# ԱՍՏՈՒԱԾԱՇՈՒՆՉ

## ԳԻՐՔ

## ՀԻՆ ԵՒ ՆՈՐ ԿՏԱԿԱՐԱՆԱՑ

---

ԵԲՐԱՅԱԿԱՆ ԵՒ ՅՈՒՆԱԿԱՆ ԲՆԱԳԻՐՆԵՐԷՆ
ԹԱՐԳՄԱՆՈՒԱԾ

---

ՆՈՐ ԵՕՐՔ
Ի ՏՊԱՐԱՆԻ ԱՍՏՈՒԱԾԱՇՈՒՆՉԻ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ

1917

[*Armenian Ref.*, 8vo.]

# ՑԱՆԿ

## ՀԻՆ ԵՒ ՆՈՐ ԿՏԱԿԱՐԱՆԱՑ

# ԳԻՐՔ ԾՆՆԴՈՑ

## ԳԼՈՒԽ Ա

1 Երկնից ու երկրի, 3 լուսոյ, 6 ու հաստատութեան ստեղծուիլը ։ 9 Երկրին ջուրերէն զատուիլը, 11 ու պտղաբեր ըլլալը ։ 14 Արեւին, լուսինին ու աստղերուն, 20 ձուկերուն և թռչուններուն, 24 ու գազաններուն և անասուններուն, 26 և Աստուծոյ պատկերով՝ մարդուն ստեղծուիլը ։ 29 Կերակուրին սահմանուիլը ։

1 [ա]Սկիզբէն Աստուած երկինքը ու
2 երկիրը [բ]ստեղծեց ։ Ու երկիրը
անձև ու պարապ էր. և անդունդին
վրայ խաւար կար. և [գ]Աստուծոյ
Հոգին ջուրերուն վրայ կը շարժէր ։
3 Եւ [դ]Աստուած ըսաւ. [ե]Լոյս ըլլայ.
4 ու լոյս եղաւ ։ Եւ Աստուած
տեսաւ լոյսը որ բարի է. ու Աստուած լոյսը խաւարէն զատեց ։
5 Եւ Աստուած լոյսին անունը՝ Ցորեկ, ու խաւարին անունը՝ Գիշեր
դրաւ. և իրիկուն ու առտու ըլլալով՝ առաջին օրը եղաւ ։
6 Եւ Աստուած ըսաւ. Ջուրերուն
մէջտեղը [զ]*հաստատութիւն ըլլայ,
7 որ ջուրերը ջուրերէն զատէ ։ Եւ
Աստուած հաստատութիւնը ըրաւ,
ու [է]հաստատութեան տակը եղած
ջուրերը՝ [ը]հաստատութեանը վրայ
եղած ջուրերէն զատեց. ու այնպէս
8 եղաւ ։ Եւ Աստուած հաստատութիւնը՝ Երկինք կոչեց. և իրիկուն
ու առտու ըլլալով՝ երկրորդ օրը
եղաւ ։
9 Եւ Աստուած ըսաւ. [թ]Երկինքին
տակը եղած ջուրերը մէկտեղ ժողվուին, ու ցամաքը երևնայ. և
10 այնպէս եղաւ ։ Եւ Աստուած
ցամաքին անունը՝ Երկիր դրաւ,
ու ջուրերուն ժողովքը՝ Ծովեր կոչեց. և Աստուած տեսաւ որ բարի
11 են ։ Ու ըսաւ Աստուած. Երկիրը
[ժա]կանանչ խոտ բուսցընէ, սերմ
տուող խոտ, և իր տեսակին պէս
[ժբ]պտուղ տուող պտղաբեր ծառ,
որ իր մէջը իր սերմը ունենայ երկրի
12 վրայ. ու այնպէս եղաւ ։ Ու
երկիրը կանանչ խոտ, իր տեսակին
պէս սերմ տուող խոտ, և իր
տեսակին պէս սերմ ունեցող պտղաբեր ծառ հանեց ու Աստուած
13 տեսաւ որ բարի են ։ Եւ իրիկուն
ու առտու ըլլալով՝ երրորդ օրը եղաւ ։
14 Եւ ըսաւ Աստուած. Երկնից
հաստատութեանը մէջ [ժգ]լուսաւորներ ըլլան, որ ցորեկը գիշերէն
զատեն. և նշաններու ու [ժդ]ժամեններու, և օրերու, ու տարիներու
15 համար ըլլան. Ու երկնից հաստատութեանը մէջ լուսաւորներու
համար ըլլան, որ երկրի վրայ լոյս
16 տան. ու այնպէս եղաւ ։ Եւ
Աստուած [ժե]երկու մեծ լուսաւորները ըրաւ. մեծ լուսաւորը ցորեկին
իշխելու համար, ու [ժզ]պզտիկ լուսաւորը գիշերին իշխելու համար.
17 [ժէ]աստղերն ալ ըրաւ ։ Եւ Աստուած
երկնից հաստատութեանը մէջ դըրաւ զանոնք, որ երկրի վրայ լոյս
18 տան, Եւ [ժը]ցորեկին ու գիշերին
իշխեն, և լոյսը խաւարէն զատեն.
ու Աստուած տեսաւ որ բարի են ։
19 Եւ իրիկուն ու առտու ըլլալով՝
չորրորդ օրը եղաւ ։
20 Եւ ըսաւ Աստուած. Ջուրերը
կենդանութեան շունչ ունեցող
սողուններ հանեն. և թռչունները
երկրի վրայ՝ երկնից հաստատու-
21 թեանը երեսը թռչին ։ Եւ [ժթ]Աստուած ստեղծեց մեծամեծ կէտերը,
և ամէն սողացող շնչաւոր կենդանին՝ որ ջուրերը հանեցին անոնց
տեսակին պէս, ու ամէն թևաւոր
թռչունը իր տեսակին պէս. և
Աստուած տեսաւ որ բարի են ։
22 Ու Աստուած օրհնեց զանոնք՝ ըսելով. [ի]Աճեցէք ու շատցէք, և ծովերուն մէջ եղած ջուրերը լեցուցէք. թռչուններն ալ երկրի վրայ
23 շատնան ։ Ու իրիկուն ու առտու
ըլլալով՝ հինգերորդ օրը եղաւ ։
24 Եւ ըսաւ Աստուած. Երկիրը
թող հանէ շնչաւոր կենդանի՝ իր
տեսակին պէս, անասուններ, սողուններ ու երկրի գազաններ՝ իրենց
տեսակին պէս. և այնպէս եղաւ ։
25 Ու Աստուած երկրի գազանները
իրենց տեսակին պէս, և ընտանի անասունները իրենց տեսակին պէս,
ու գետնի ամէն սողունները իրենց

Նախ քան Քրիստոս 4004

ա Յոհ. ա. 1, 2 ։ Եբր. ա. 10 ։
բ Սաղ. ը. 3 ։ լգ. 6 ։ ձթ. 11, 12 ։ ճբ. 25 ։ ճլզ. 5 ։ ճխզ. 6 ։ Ես. խդ. 24 ։ Երեմ. ժ. 12 ։ ծա. 15 ։ Զաք. ժբ. 1 ։ Գոր. ժդ. 15 ։ ժէ. 24 ։ Կող. ա. 16, 17 ։ Եբր. ժա. 3 ։ Յայտ. դ. 11 ։ ժ. 6 ։
գ Սաղ. լգ. 6 ։ Ես. խ. 13, 14 ։
դ Սաղ. լգ. 9 ։
ե Բ Կոր. դ. 6 ։
զ Սաղ. հդ. 16 ։ ճդ. 20 ։
է Յոբ. լէ. 18 ։ Սաղ. ճլզ. 5 ։ Երեմ. ժ. 12 ։ ծա. 15 ։
* Եբր. տարածութիւն
ը Առակ. ը. 28 ։
թ Սաղ. ճխը. 4 ։
ժ Յոբ. իզ. 10 ։ լը. 8 ։ Սաղ. լգ. 7 ։ ղե. 5 ։ ճդ. 9 ։ ճլզ. 6 ։ Առակ. ը. 29 ։ Երեմ. ե. 22 ։ Բ Պետ. գ. 5 ։
ժա Եբր. զ. 7 ։
ժբ Ղու. զ. 44 ։

Նախ քան Քրիստոս 4004

ժգ Օր. դ. 19 ։ Սաղ. հդ. 16 ։ ճլզ. 7 ։
ժդ Սաղ. հդ. 17 ։ ճդ. 19 ։
ժե Սաղ. ճլզ. 7, 8, 9 ։ ճխը. 3, 5 ։
ժզ Սաղ. ը. 3 ։
ժէ Յոբ. լը. 7 ։
ժը Երեմ. լա. 35 ։
ժթ Ծն. զ. 20 ։ է. 14 ։ ը. 19 ։ Սաղ. ճդ. 26 ։
ի Ծն. ը. 17 ։

Ն · Ք · ԴՔ · 4004

ժ Գլ · ե · 1 ։ Թ · 6 ։ Սաղ · ճ · 3 ։ Ժող · է · 29 ։ Գոր · ժէ · 20 , 28 ։ 29 ։ ա Կոր · ժա · 7 ։ Եփե · դ · 24 ։ Կող · գ · 10 ։ Յակ · գ · 9 ։

ն Գլ · Թ · 2 ։ Սաղ · ը · 6 ։

ւ ա Կոր · ժա · 7 ։

օ Գլ · ե · 2 ։ Մաղ · բ · 15 ։ Մատ · ժթ · 4 ։ Մար · ժ · 6 ։

ւ Գլ · Թ · 1 · 7 ։ Ղև · իզ · 9 ։ Սաղ · ճիէ · 3 ։ ճիը · 3 , 4 ։

ղ Գլ · Թ · 3 ։ Յոբ · լզ · 31 ։ Սաղ · ճդ · 14 , 15 ։ ճլզ · 25 ։ ճխզ · 7 ։ Գոր · ժդ · 17 ։

ջ Սաղ · ճխե · 15 , 16 ։ ճխէ · 9 ։

ռ Յոբ · լը · 41 ։

ս Սաղ · ճդ · 24 ։ ա Տիմ · դ · 4 ։

ա Սաղ · լդ · 6 ։

* Եբր · գործքը ։

բ Եւ · ի 11 ։ լա · 17 ։ բ Օր · ե 14 ։ Եբր · դ · 4 ։

գ Նեեմ · Թ · 14 ։ Եսա · ծը · 13 ։

դ Գլ · ա · 1 ։ Սաղ · չ · 1 , 2 ։

ե Գլ · ա · 12 ։ Սաղ · ճդ · 14 ։

զ Յոբ · լը · 26 , 27 , 28 ։

ե Գլ · գ · 23 ։

տեսակին պէս ըրաւ . և Աստուած
տեսաւ որ բարի են ։
26 Եւ ըսաւ Աստուած . ժՄեր
պատկերին ու մեր նմանութեանը
պէս մարդ ընենք , և ն ծովու ձու֊
կերուն , ու երկինքի Թռչուններուն ,
և անասուններուն , ու բոլոր երկրին ,
ու երկրի վրայ սողացող բոլոր
27 սողուններուն Թող իշխէ ։ Եւ Աս֊
տուած իր պատկերովը ստեղծեց
մարդը . ւ Աստուծոյ պատկերովը
ստեղծեց զանիկայ . օարու և էգ
28 ստեղծեց զանոնք ։ Ու Աստուած
օրհնեց զանոնք , և Աստուած անոնց
ըսաւ . ւ Աճեցէ՛ք ու շատցէ՛ք , ու
երկիրը լեցուցէ՛ք , և անոր տիրեցէ՛ք .
ու ծովու ձուկերուն , ու երկինքի
Թռչուններուն , և երկրի վրայ
սողացող ամէն կենդանիներուն իշ֊
խեցէ՛ք ։
29 Եւ ըսաւ Աստուած . Ահա՛ ձեզի
տուի բոլոր երկրի վրայ եղած ամէն
սերմ ունեցող խոտը , ու ամէն
ծառը՝ որուն մէջ սերմ տուող
ծառի պտուղ կայ . ղ Ձեզի կերա֊
30 կուր պիտի ըլլայ . Ու երկրի ջբոլոր
գազաններուն , ու երկինքի բոլոր
ռԹռչուններուն , և երկրի վրայ
կենդանութեան շունչ ունեցող
բոլոր սողուններուն՝ ամէն կանանչ
խոտը կերակուրի համար տուի . ու
այնպէս եղաւ ։
31 Եւ Աստուած սիր ամէն ըրածը
տեսաւ , և ահա շատ բարի էր ։
Եւ իրիկուն ու առտու ըլլալով՝
վեցերորդ օրը եղաւ ։

## ԳԼ · Բ

1 Հանգստութեան օրը ։ 4 Ստեղծագործութեան կերպը ։ 8 Եդեմի պարտէզը , 10 ու անկէ ելած գետը ։ 17 Միայն գիտութեան ծառին պտուղէն ուտելը կ՚արգիլուի ։ 19 Ստեղծուածներուն անուանադրութիւնը ։ 21 Կնկան ստեղծուիլը , և ամուսնութեան հաստատուիլը ։

1 Ու կատարուեցաւ երկինքը ու
երկիրը՝ և աանոնց ամէն *զարդե֊
2 րը ։ Եւ բԱստուած իր ըրած գործ֊
քերը եօԹներորդ օրը լմնցուց ,
ու եօԹներորդ օրը հանգստացաւ
3 իր ըրած բոլոր գործքերէն ։ Եւ
գ օրհնեց Աստուած եօԹներորդ օրը ,
ու սրբեց զանիկայ . ինչու որ անոր
մէջ հանգստացաւ իր ամէն գործ֊
քերէն՝ որ Աստուած ստեղծեց ու
ըրաւ ։
4 դ Ասոնք են երկնից ու երկրի
ծնունդները՝ անոնց ստեղծուած
ատենը , ան օրը որ Տէր Աստուած
5 երկիրը ու երկինքը ըրաւ , Ու դաշ֊
տին բոլոր եբոյսերը դեռ երկրի վրայ
չեղած , և դաշտին բոլոր խոտը դեռ
չբուսած . ինչու որ Տէր Աստուած
երկրի վրայ տակաւին զանձրև
բերած չէր , ու ե գետինը գործելու
6 մարդ չկար . Հապա երկրէն †շոգի
կ՚ելլէր , ու գետնի բոլոր երեսը կը
7 ջրէր ։ Եւ Տէր Աստուած ըգետնի
հողէն շինեց մարդը , և անոր
ռ քիթին ծակերուն կենդանութեան
ժ շունչ փչեց , ու ի մարդը կենդանի
հոգի եղաւ ։
8 Եւ Տէր Աստուած լարևելքին
կողմը ի Եդեմի մէջ ժ պարտէզ տնկեց ,
ու իր շինած մարդը ի հոն դրաւ ։
9 Եւ Տէր Աստուած գետնէն՝ տեսնե֊
լու հաճելի և ուտելու աղէկ կամէն
ծառը , ու պարտէզին մէջտեղը
ծկենաց ծառը , և ղբարին ու չարը
գիտնալուն ծառն ալ բուսցուց ։
10 Եւ պարտէզը ջրելու համար Եդեմէն
գետ մը կ՚ելլէր , ու անկէ չորս
11 գլխու կը բաժնուէր ։ Մէկուն ա֊
նունը Փիսոն է . ասիկայ յԵւիլայի
բոլոր երկիրը կը պտըտի , ուր որ ոս֊
12 կի կայ . Եւ ան երկրին ոսկին ազնիւ
է . ժ Յուլուտակ ու եղնգնաքար կայ
13 հոն ։ Ու երկրորդ գետին անունը
Գեհոն է . ասիկայ Քուշի բոլոր
14 երկիրը կը պտըտի ։ Ու երրորդ
գետին անունը յՏիգրիս է . ասիկայ
Ասորեստանի արևելեան կողմը կ՚եր֊
Թայ ։ Եւ չորրորդ գետը Եփրատ է ։
15 Եւ Տէր Աստուած առաւ մարդը ,
ու Եդեմի ն պարտէզին մէջը դրաւ ,
16 որ զանիկայ գործէ ու պահէ ։ Եւ
Տէր Աստուած պատուիրեց մար֊
դուն՝ ըսելով . Պարտէզին ամէն
17 ծառէն համարձակ կե՛ր . Բայց
ւ բարիի ու չարի գիտութեան ծա֊
ռէն սմի՛ ուտեր . քանզի անկէ
կերած օրդ ւ անշուշտ պիտի մեռ֊
նիս ։
18 Եւ Տէր Աստուած ըսաւ . Աղէկ
չէ որ ‖ Ադամը մինակ ըլլայ . անոր
ղ օգնական մը ընեմ իրեն յարմար ։
19 Եւ Տէր Աստուած ջդաշտին բոլոր
գազանները ու երկինքին բոլոր
Թռչունները հողէն շինեց , և
ռ Ադամին առջևը բերաւ , որ տեսնէ
Թէ անոնց ի՛նչ անուն կը դնէ . և
Ադամ ի՛նչ անուն որ դրաւ շնչաւոր
կենդանիի , ան եղաւ անոր անունը ։
20 Եւ Ադամ բոլոր անասուններուն ,
ու երկինքի Թռչուններուն , և
դաշտի բոլոր գազաններուն անուն֊
ներ դրաւ . բայց Ադամին՝ իրեն
յարմար օգնական մը չգտնուեցաւ ։
21 Եւ Տէր Աստուած սխորունկ քուն
մը բերաւ Ադամին վրայ . ու անի֊
կայ քնացաւ . և անոր կողին ոս֊
կորներէն մէկը առաւ , ու անոր
22 տեղը միս լեցուց . Եւ Տէր Աս֊
տուած Ադամէն առած կողին ոսկորը
կնիկ շինեց , ու ւզանիկայ Ադամին
23 բերաւ ։ Եւ Ադամ ըսաւ . Հիմա
ասիկայ տոսկորէս ոսկոր , ու մար֊
մինէս մարմին է . ասիկայ § կնիկ

Ն · Ք · ԴՔ · 4004

† Կամ՝ աղբիւր

ը Գլ · գ · 19 , 23 ։ Սաղ · ճգ · 14 ։ Ժող · ժբ · 7 ։ Եսա · կզ · 8 ։ ա Կոր · ժե · 47 ։

ր Գլ · է · 22 ։ Եսա · բ · 22 ։

ժ Յոբ · լգ · 4 ։ Գոր · ժէ · 25 ։

ի ա Կոր · ժե · 45 ։

լ Գլ · գ · 24 ։

ի Գլ · դ · 16 ։ դ Թագ · ժԹ · 12 ։ Եզեկ · իէ · 23 ։

ծ Գլ · ժգ · 10 ։ Եսա · ծա · 3 ։ Եզեկ · իը · 13 ։ Յովէլ · բ · 3 ։

կ Հայտ · 15 ։

հ Եզեկ · լա · 8 ։

յ Գլ · դ · 22 ։ Առակ · գ · 18 ։ ժա · 30 ։ Յայտ · բ · 7 ։ իբ · 2 , 14 ։

ղ Հմտ 17 ։

ճ Գլ · իե · 18 ։

մ Թուե · ժա · 7 ։

‡ Կամ՝ մարգարիտ

յ Դան · ժ · 4 ։

ն Հմր 8 ։

շ Հմր 9 ։

ո Գլ · գ · 1 , 3 , 11 , 17 ։

չ Գլ · գ · 3 , 19 ։ Հռով · զ · 23 ։ ա Կոր · ժե · 56 ։ Յակ · ա · 15 ։ ա Յով · ե · 16 ։

‖ Կամ՝ մարդը

պ Գլ · դ · 12 ։ ա Կոր · ժա · 9 ։ ա Տիմ · բ · 13 ։

ջ Գլ ա · 20 , 24 ։

ռ Սաղ · ը · 6 ։ Տե՛ս Գլ · զ · 20 ։

ս Գլ · ժե 12 ։ ա Թագ իզ · 12 ։

վ Առակ ժը · 22 ։ Եբր · ժգ · 4 ։

տ Գլ · իԹ · 14 ։ Դատ · Թ · 2 ։ բ Թագ · ե · 1 ։ ժԹ · 13 ։ Եփե · ե · 30 ։

§ Եբր · ԻՇԱ ։

Ն · Ք · ՂՔ ·
4004

* Եբր · ԻՉ ·
ա Կոր · Ժա · 8 ·
ց Գլ · Լա · 15 · Սաղ · ԽԵ · 10 · Մատ · ԺԹ · 5 · Մար · Ժ · 7 · ա Կոր · Զ · 16 · Եփե · Ե · 31 ·
- Գլ · Դ · 7 , 10 , 11 ·
‡ Եւ · ԼԸ · 25 · Եփ · ԽԷ · 3 ·

ա Մատ · Ժ · 16 · բ Կոր · Ժա · 3 ·
Բ Յայտ · ԺԲ · 9 · Ի · 2 ·
‡ Գլ · Բ · 17 ·
Տ Հռմ · 13 · բ Կոր · Ժա · 3 · ա Տիմ · Բ · 14 ·
Ի Հռմ · 7 · Գոր · ԻԶ · 18 ·
† Կամ՝ տեսանելու
ա Տիմ · Բ · 14 ·
Ի Հռմ · 12 , 17 ·
Ը Հռմ 5 ·
Բ Գլ · Բ · 25 ·
Ժ Յոր · ԼԸ · 1 ·
Ի Յոբ · ԼԱ · 33 · Երեմ · ԻԴ · 24 · Ամով · Թ · 3 ·
Լ Գլ · Բ · 25 · Եւ · Զ · 6 · ա Յոհ · Գ · 20 ·
Ի Գլ · Ր · 18 · Յոբ · ԼԱ · 33 · Առակ · ԻԸ · 13 ·
Ծ Հռմ 4 · բ Կոր · Ժա · 3 · ա Տիմ · Բ · 14 ·

կոչուի · քանզի իր *էրիկէն առ-
24 նուեցաւ ։ ցԱնոր համար էրիկը
պիտի ձգէ իր հայրը ու իր մայրը ,
և իր կնկանը պիտի յարի · ու մէկ
25 մարմին պիտի ըլլան ։ Եւ Ադամ ու
իր կնիկը երկուքն ալ -մերկ էին ,
ու չէին ‡ամչնար ։

## ԳԼ · Գ

1 Կնիկը օձէն կը խաբուի ։ 6 Ադամ ու իր կինը մեղքի մէջ կ'իյնան ։ 9 Աստուած անոնց դատաստան կ'ընէ ։ 14 Օձը կ'անիծուի ։ 15 Կնկանը սերունդը ։ 16 Մարդկային սեռին պատիժը ։ 21 Նախաստեղծներուն հանդերձները ։ 22 Անոնք դրախտէն կը վռընտուին ։

1 Եւ Տէր Աստուծոյ ըրած դաշտի
բոլոր գազաններէն աւելի
խորամանկ էր Բօձը · ու կնկանը
ըսաւ · Իրաւ Աստուած ըսա՞ւ՝ թէ
Պարտէզին ամէն ծառէն պիտի չու-
2 տէք ։ Եւ կնիկը օձին ըսաւ · Պար-
տէզին ծառերուն պտուղէն կ'ու-
3 տենք · Բայց ‡պարտէզին մէջտեղը
եղած ծառին պտուղէն՝ Աստուած
ըսաւ · Անկէ մի՛ ուտէք , և անոր մի՛
4 դպչիք , որ չմեռնիք ։ ՏԵւ օձը
կնկանը ըսաւ , Չէ՛ թէ անշուշտ
5 պիտի մեռնիք · Քանզի Աստուած
գիտէ թէ՝ այն օրը որ անկէ ուտէք ,
Իաչքերնիդ պիտի բացուի , և
աստուածներու պէս պիտի ըլլաք՝
բարին ու չարը գիտնալով ։
6 Եւ կնիկը տեսնելով որ ծառը ա-
ղէկ էր կերակուրի համար , և հաճելի
աչքերուն , ու փափաքելի՝ †իմաս-
տուն ընելու համար , առաւ անոր
պտուղէն ու կերաւ , և իրեն հետ
իր էրկանն ալ տուաւ , և Իանիկայ
7 կերաւ ։ Ու անոնց երկուքին Ըաչքերը
բացուեցան , ու Բմերկ ըլլալնին
գիտցան , և թզենիի տերևներ
կարեցին , ու իրենց ծածկոցներ
8 ըրին ։ Եւ օրուան զով ատենը պար-
տէզին մէջ պտըտող Տէր Աստուծոյ
Ժձայնը լսեցին · և Ադամ ու իր
կնիկը Տէր Աստուծոյ երեսէն պար-
տէզին ծառերուն մէջը Իպահուե-
9 ցան ։ Եւ Տէր Աստուած Ադամը
10 կանչեց ու ըսաւ անոր · Ո՞ւր ես ։ Եւ
անիկայ ըսաւ · Պարտէզին մէջ քու
ձայնդ լսեցի , ու Լվախցայ , ինչու
11 որ մերկ էի , ու պահուեցայ ։ Եւ
Աստուած ըսաւ · Ո՞վ պատմեց քեզի
քու մերկ ըլլալդ · արդեօք կերա՞ր այն
ծառէն՝ որուն համար քեզի պա-
12 տուիրեցի որ անկէ չուտես ։ Եւ
Ադամ ըսաւ · ԻԱն կնիկը՝ որ ինծի
հետ ըլլալու տուիր , ան ինծի տուաւ
13 ծառէն , ու ես կերայ ։ Եւ Տէր
Աստուած ըսաւ կնկանը · Ի՞նչ է աս
քու ըրածդ · և կնիկը ըսաւ · ԾՕձը զիս
14 խաբեց , ու ես կերայ ։ Եւ Տէր
Աստուած օձին ըսաւ · Աս ընելուդ
համար՝ ամէն անասուններէն և
դաշտին ամէն գազաններէն անի-
ծեալ ըլլաս · փորիդ վրայ քալես , ու
կենացդ բոլոր օրերը Լհող ուտես ։
15 Եւ քուկին ու կնկանը մէջ տեղը , և
Հքու սերունդիդ ու Ճանոր սերուն-
դին մէջտեղը՝ թշնամութիւն պիտի
դնեմ · Ղան քու գլուխդ պիտի
‡ջախջախէ , և դուն անոր գարշա-
16 պարը պիտի ‖խայթես ։ Եւ կնկա-
նը ըսաւ · Քու յղութեանդ ցաւերը
խիստ պիտի շատցընեմ · Եցաւով
զաւակ ծնանիս , ու էրկանդ Ճհնա-
զանդ ըլլաս , ու անիկայ Յքու վրադ
17 իշխէ ։ Եւ Ադամին ըսաւ · Որով-
հետև դուն Նքու կնկանդ խօսքը
մտիկ ըրիր , և Ղան ծառէն կերար ,
Ոորուն համար պատուիրեցի քեզի՝
ըսելով , Չուտես անկէ , երկիրը քու
պատճառովդ Նանիծեալ ըլլայ ·
կենացդ բոլոր օրերուն մէջ Ոնեղու-
18 թիւնով ուտես անկէ ։ Եւ Չփուշ
ու տատասկ բուսցընէ քեզի , և
19 Պդաշտին խոտը ուտես ։ Ջերեսիդ
քրտինքովը ուտես Ռհացդ , մինչև
հող դառնալդ , քանզի անկէ առ-
նուեցար · ինչու որ Ս հող էիր դուն ,
ու Վհող պիտի դառնաս ։
20 Եւ Ադամ իր կնկանը անունը՝
§Եւայ դրաւ · ինչու որ ամէն կեն-
դանութիւն ունեցողներուն մայրը
21 անիկայ էր ։ Եւ Տէր Աստուած
Ադամին ու անոր կնկանը կաշիէ
հանդերձներ շինեց , ու անոնց հագ-
22 ցուց ։ Եւ Տէր Աստուած ըսաւ ·
ՏԱհա՛ Ադամ մեզմէ մէկուն պէս
եղաւ՝ բարին ու չարը գիտնալու ·
և հիմա չըլլայ որ իր ձեռքը երկըն-
ցընէ , ու Ցկենաց ծառէն ալ առնէ ,
և ուտէ ու յաւիտեան ապրի ·
23 Ուստի Տէր Աստուած Եդեմի պար-
տէզէն դուրս ըրաւ զանիկայ , Ւոր
երկիրը գործէ , ուսկից որ առնուե-
24 ցաւ ։ Այսպէս վռընտեց Ադամը ·
ու Եդեմի պարտէզին Փարևելեան
կողմէն +քերովբէները , ու ամէն
կողմ դարձող բոցեղէն սուրը
դրաւ ։ կենաց ծառին ճամբան
պահելու համար ։

## ԳԼ · Դ

1 Կայենին ու Հաբելին ծնունդը , արուեստը , ու հաւատքը ։ 8 Հաբելին սպաննուիլը ։ 11 Կայենին անիծուիլը ։ 17 Ենովք առաջին քաղաքը ։ 19 Ղամէք ու իր երկու կնիկները ։ 25 Սեթին , 26 ու Ենովսին ծնունդը ։

1 Եւ Ադամ գիտցաւ իր Եւայ կնի-
կը , ու ան յղացաւ , ու ⁑Կայէնը
ծնաւ , և ըսաւ · Մարդ ստացայ Տէ-
2 րոջմէն ։ Եւ դարձեալ անոր Հա-
բէլ եղբայրը ծնաւ · և Հաբէլ
ոչխարներու հովիւ եղաւ , բայց

Ն · Ք · ՂՔ ·
4004

Լ Եւ · ԿԵ · 25 · Միք · Է · 17 ·
Հ Մատ · Գ · 7 · ԺԳ · 38 · ԻԳ · 33 · Յոհ · Ը · 44 · Գոր · ԺԳ · 10 · ա Յոհ · Գ · 8 ·
Ճ Սաղ · ՃԼԲ · 11 · Եւ · Է · 14 · Միք · Ե · 3 · Մատ · Ա · 23 , 25 · Ղուկ · Ա · 31 , 34 , 35 · Գաղ · Դ · 4 ·
Ղ Հռով · ԺԶ · 20 · Կող · Բ · 15 · Եբր · Բ · 14 · ա Յոհ · Ե · 5 · Յայտ · ԺԲ · 7 , 17 ·
‡ Եբր · ջախջախէ ,
‖ Եբր · խայթես ·
Ե Սաղ · ԽԸ · 6 · Եւ · ԺԳ · 8 · Իա · 3 · Յոհ · ԺԶ · 21 · ա Տիմ · Բ · 15 ·
Ճ Գլ · Դ · 7 ·
Յ ա Կոր · Ժա · 3 · ԺԴ · 34 · Եփե · Ե · 22 , 23 , 34 · ա Տիմ · Բ · 11 , 12 · Տիտ · Բ · 5 · ա Պետ · Գ · 1 , 5 , 6 ·
Ն ա Թագ · ԺԵ · 23 ·
Ն Հռմ 6 ·
Ո Գլ · Բ · 17 ·
Ն Ժող · Ա · 2 · 3 · Եւ · ԻԴ · 5 , 6 · Հռով · Ը · 20 ·
Ո Յոբ · Ե · 7 · Ժող · Բ · 28 ·
Չ Յոբ · ԼԹ · 40 ·
Պ Սաղ · ՃԴ · 14 ·
Ջ Ժող · Ա · 13 · Բ Թես · Գ · 10 ·
Ս Գլ · Բ · 7 ·
Վ Յոբ · ԻԱ · 26 · ԼԴ · 15 · Սաղ · ՃԴ · 29 · Ժող · Գ · 20 · ԺԲ · 7 · Հռով · Ե · 12 · Եբր · Թ · 27 ·
§ Այսինքն կեանք ·

Տ Հռմ 5 · Եւ · ԺԹ · 12 · ԽԵ · 12 , 13 · Երեմ · Ի · 23 · Ց Գլ · Բ · 9 · Ւ Գլ · Գ · 2 · Թ · 20 · Փ Գլ · Բ · 8 · + Սաղ · ՃԴ · 4 · Եբր · Ա · 7 · —— 4003 ⁑ստացուած ·

Ն․ Ք․ ՂՔ․
Իրր 4003

ա Գլ․ դ․ 23։ Թ․ 20։
բ Թու․ ժը․ 12։
գ Թու․ ժը․ 17։ Առակ․ գ․ 9։
դ Եբր․ ժա․ 4։
ե Գլ․ լա․ 2։

* Կամ՝ Մեղքի պատարագը
զ Գլ․ գ․ 16։

Իրր 3875

է Մատ․ իգ․ 35։ ա Յովհ․ գ․ 12։ Յուդ․ 11։
ը Սաղ․ Թ։ 12։
թ Յովհ․ Ը։ 44։
ժ Եբր․ ժբ․ 24։ Յայտ․ Զ․ 10։

† Կամ՝ Մեղքս թողութիւն գտնելու չափէն աւելի մեծ է։
ի Յոբ․ ժե․ 20-24։
լ Սաղ․ ծա․ 11։
խ Գլ․ Թ․ 6։ Թու․ լե․ 19, 21, 27։
ծ Սաղ․ ՀԹ․ 12։
կ Եզեկ․ Թ․ 4, 6։
‡ Կամ՝ Կայենին վրայ։
հ Դ. Թագ․ ժդ․ 23։ իդ․ 20։ Երեմ․ իդ․ 39։ ծբ․ 3։
Իրր 3875
յ Սաղ․ խԹ․ 11։

3 Կայէն ⁼երկիրը կը գործէր ։ Ու
եղաւ որ ժամանակէ մը ետքը՝ Կա-
յէն ᵇերկրի պտուղէն Տէրոջը ըն-
4 ծայ բերաւ ։ Եւ Հաբէլ՝ ինքն ալ
իր ոչխարներուն ᶜառաջինեկներէն ,
ու անոնց պարարտներէն բերաւ ․
և Տէրը ᵈՀաբէլին՝ ու անոր ընծա-
5 յին նայեցաւ ․ Բայց Կայէնին՝ ու
անոր ընծային չնայեցաւ ․ ուստի
Կայէն խիստ բարկացաւ, ու ᵉերեսը
6 կախեց ։ Եւ Տէրը Կայէնին ըսաւ ․
Ինչո՞ւ բարկացար , ու ինչո՞ւ երե-
7 սըդ կախեցիր ․ Թէ որ աղէկ ընես ,
ընդունելի չը՞լլար ․ և Թէ որ աղէկ
չընես , *մեղքը դրանդ քով պառ-
կած է ․ ᶻԵւ անիկայ քեզի պիտի
հնազանդի , ու դուն անոր պիտի
իշխես ։
8 Եւ Կայէն իր Հաբէլ եղբօրը հետ
խօսեցաւ ․ ու եղաւ որ երբ անոնք
դաշտն էին , Կայէն իր Հաբէլ եղ-
բօրը վրայ ելաւ , ու ᵉսպաննեց զա-
9 նիկայ ։ Եւ Տէրը Կայէնին ըսաւ ․
ըՈ՞ւր է քու եղբայրդ Հաբէլը ։
Եւ անիկայ ըսաւ ․ թՉեմ գիտեր ․
միթէ ես իմ եղբօրս պահապա՞նն
10 եմ ։ Եւ Տէրը ըսաւ ․ Ի՞նչ ըրիր ․
քու եղբօրդ ժարիւնին ձայնը գետ-
11 նէն ինծի կը բողոքէ ։ Եւ հիմա
դուն անիծեալ ես երկրէն , որ իր
բերանը բացաւ եղբօրդ արիւնը քու
12 ձեռքէդ ընդունելու ։ Երբ որ
երկիրը գործես , այսուհետև իր
արդիւնքը չտայ քեզի ․ երկրի մէջ
աստանդական ու Թափառական
13 ըլլաս ։ Եւ Կայէն ըսաւ Տէրոջը ․
†Իմ պատիժս՝ կրելու կարողու-
14 Թենէս աւելի մեծ է՞ ։ իԱհա՛ զիս
այսօր երկրին երեսէն վռընտեցիր ,
ու ես Նքու երեսէդ պիտի պա-
հուիմ ; ու երկրի մէջ աստան-
դական ու Թափառական պիտի
ըլլամ ․ և պիտի ըլլայ որ՝ խո՛վ որ
զիս գտնէ , զիս պիտի մեռցընէ ։
15 Եւ Տէրը ըսաւ անոր ․ Ուրեմն ո՛վ
որ Կայէնը սպաննէ , անկէ ծեօԹն-
պատիկ վրէժ առնուի ։ ․ Եւ Տէրը
կնշան մը դրաւ ‡Կայէնին , որ զանի-
կայ գտնող մէկը չմեռցընէ զանի-
կայ ։
16 Եւ Կայէն հՏէրոջը առջևէն ելաւ ,
ու Եդեմի արևելեան կողմը՝ Նայիդ
17 երկիրը բնակեցաւ ։ Եւ Կայէն իր
կնիկը գիտցաւ , ու անիկայ յղա-
ցաւ , ու Ենովքը ծնաւ ․ և քաղաք
մը կը շինէր ․․․ ․․․, ու քաղա-
քին անունը յիր որդւոյն անուանը
18 պէս Ենովք դրաւ ։ Ու Ենովք ծնաւ
Գայիրադը , և Գայիրադ ծնաւ
Մայիէլը , ու Մայիէլ ծնաւ Մա-
Թուսայէլը , և ՄաԹուսայէլ ծնաւ
19 Ղամէքը ։ Եւ Ղամէք իրեն եր-
կու կնիկ առաւ ․ մէկուն անունը
Ադդա , ու մէկալին անունը Սելլա
20 էր ։ Եւ Ադդա ծնաւ Յոբէլը ,
որ վրանաբնակներուն ու հովիւնե-
21 րուն հայրն էր ։ Ու անոր եղբօրը
անունը Յոբաղ էր , որ բոլոր քնա-
րահարներուն ու սրնգահարներուն
22 ըհայրն էր ։ Եւ Սելլան ալ ծնաւ
Թոբէլկայէնը , որ վարպետ պղըն-
ձագործ ու երկաԹագործ էր ․ և
Թոբէլկայէնին քոյրը Նաամա էր ։
23 Եւ Ղամէք իր կնիկներուն՝ Ադ-
դային ու Սելլային ըսաւ ․ Ձայնս
լսեցէ՛ք՝ ո՛վ Ղամէքի կնիկները ,
ականջ դրէք իմ խօսքիս ․ ինչու
որ ես մարդ մը սպաննեցի ինծի
վէրք , ու երիտասարդ մը՝ ինծի հա-
24 րուած ․․․ ։ Թէ որ Կայէնին
համար ճեօԹնպատիկ վրէժ առ-
նուի , Ղամէքին համար ալ եօԹա-
նասունեօԹը անգամ ։
25 Եւ Ադամ դարձեալ իր կնիկը
գիտցաւ , ու անիկայ որդի մը ծը-
նաւ , և անոր յանունը ‖ՍէԹ դրաւ ․
քանզի ըսաւ ․ Աստուած ինծի Կա-
յէնին մեռցուցած Հաբէլին տեղը
26 ուրիշ սերունդ մը տուաւ ։ Եւ
ՍէԹ ալ ɔորդի մը ծնաւ , ու անոր
անունը՝ Ենովս դրաւ ․ ան ատենը
սկսուեցաւ ᶰՏէրոջը §անունը կան-
չելը ։

ԳԼ․ Ե

1 Ազգաբանութիւն՝ Ադամէն մինչև Նոյ ։
24 Ենովքին Աստուածահաճոյ վարքը՝ ու եր-
կինքը փոխուիլը ։

1 Ա,ս․ է ⁼Ադամին ազգաբանուԹեան
գիրքը ։ Ան օրը որ Աստուած
մարդը ստեղծեց , ᵇԱստուծոյ պատ-
2 կերովը բրաւ զանիկայ ․ ᶜԱրու և
էգ ստեղծեց զանոնք , և օրհնեց
զանոնք , ու անոնց ստեղծուած օրը
անոնց անունը ⁑ադամ դրաւ ։
3 Եւ Ադամ հարիւր երսուն տարի
ապրեցաւ , և իր նմանուԹեամբը՝
իր պատկերին պէս որդի ծնաւ , և
4 ᵈանոր անունը ՍէԹ դրաւ ։ Եւ
ᵉԱդամին օրերը՝ ՍէԹը ծնանելէն
ետքը՝ ուԹը հարիւր տարի եղաւ ,
ᶻԵւ տղաքներ ու աղջիկներ ծնաւ ։
5 Եւ Ադամին կենացը բոլոր օրերը
ինը հարիւր երսուն տարի եղաւ ,
ᵉու մեռաւ ։
6 Եւ ՍէԹ հարիւր հինգ տարի ապ-
7 րեցաւ , ու ըծնաւ Ենովսը ։ Եւ
ՍէԹ՝ Ենովսը ծնանելէն ետքը՝
ուԹը հարիւր եօԹը տարի ապրե-
ցաւ , և տղաքներ ու աղջիկներ
8 ծնաւ ։ Եւ ՍէԹին բոլոր օրերը
ինը հարիւր տասներկու տարի ե-
ղաւ․ ու մեռաւ ։
9 Ու Ենովս իննսուն տարի ապ-
10 րեցաւ , և Կայնանը ծնաւ ։ Ու
Ենովս՝ Կայնանը ծնանելէն ետքը
ուԹը հարիւր տասնուհինգ տարի

Ն․ Ք․ ՂՔ․
Իրր 3875

ն Հռովմ․ դ․ 11, 12։

ճ Հմր 15։
3874
յ Գլ․ Ե․ 3։
‖ Ցՙ՝ դրուած։

չ Գլ․ Ե․ 6։
ո Դ. Թագ․ ժը․ 24։ Սաղ․ ճժզ․ 17։ Յովել․ բ․ 32։ Սոփ․ գ․ 9։ ա Կոր․ ա․ 2։
3769
§ Կամ՝ անունովը

4004
ա Ա Մն․ ա․ 1։ Ղուկ․ գ․ 36։
բ Գլ․ ա․ 26։ Եփե․ դ․ 24։ Կող․ գ․ 10։
գ Գլ․ ա․ 27։
⁑ Ցՙ՝ մարդ։
3874

դ Գլ․ դ․ 25։
ե ա Մն․ ա․ 1, ․․․։
զ Գլ․ ա․ 28։

ե Գլ․ գ․ 19։ Եբր․ Թ․ 27։
ը Գլ․ դ․ 26։
3769

3679

Ն. Ք. ԴՓ.
3679
ապրեցաւ, և տղաքներ ու աղջիկ-
11 ներ ծնաւ ։ Ու Ենովսին բոլոր օրե-
րը ինը հարիւր հինգ տարի եղաւ.
ու մեռաւ ։
3609
12 Եւ Կայնան եօթանասուն տարի
ապրեցաւ, ու ծնաւ Մաղաղիէլը ։
13 Եւ Կայնան՝ Մաղաղիէլը ծնանելէն
ետքը՝ ութը հարիւր քառասուն տա-
րի ապրեցաւ, և տղաքներ ու աղ-
14 ջիկներ ծնաւ ։ Եւ Կայնանին բոլոր
օրերը ինը հարիւր տասը տարի ե-
ղաւ ու մեռաւ ։
3544
15 Եւ Մաղաղիէլ վաթսունուհինգ
տարի ապրեցաւ, ու ծնաւ Յա-
16 րեդը ։ Եւ Մաղաղիէլ՝ Յարեդը
ծնանելէն ետքը՝ ութը հարիւր եր-
սուն տարի ապրեցաւ, և տղաքներ
17 ու աղջիկներ ծնաւ ։ Եւ Մաղա-
ղիէլին բոլոր օրերը ութը հարիւր
իննսունուհինգ տարի եղաւ. ու
մեռաւ ։
3382
18 Եւ Յարեդ հարիւր վաթսուն-
ուերկու տարի ապրեցաւ, ու ծնաւ
ª Յուդ. ժդ. 15 ։
19 ªԵնովքը ։ Եւ Յարեդ՝ Ենովքը
ծնանելէն ետքը՝ ութը հարիւր տա-
րի ապրեցաւ, և տղաքներ ու աղ-
20 ջիկներ ծնաւ ։ Եւ Յարեդին բո-
լոր օրերը ինը հարիւր վաթսուն-
ուերկու տարի եղաւ. ու մեռաւ ։
3317
21 Ու Ենովք վաթսունուհինգ տա-
րի ապրեցաւ, և ծնաւ Մաթուսա-
22 ղան ։ Ու Ենովք՝ Մաթուսաղան
ծնանելէն ետքը՝ իրեք հարիւր տա-
ծ Գլ. զ. 9 ։ ժէ. 1 ։ իդ. 40 ։ դ Թագ. ի. 3 ։ Սաղ. ժզ. 8 ։ ճժզ. 9 ։ ճիը. 1 ։ Միք. զ. 8 ։ Մաղ. բ. 6 ։
րի ծԱստուծոյ հետ քալեց, և տը-
23 ղաքներ ու աղջիկներ ծնաւ ։ Ու
Ենովքին բոլոր օրերը իրեք հարիւր
24 վաթսունուհինգ տարի եղաւ ։ Ու
Ենովք էԱստուծոյ հետ քալեց, և
չէր գտնուեր. ինչու որ Աստուած
առաւ զանիկայ ։
է Եբր. ժա. 5 ։ ե Թագ. բ. 11 ։
25 Եւ Մաթուսաղայ հարիւր ութ-
սունուեօթը տարի ապրեցաւ, ու
3130
26 ծնաւ Ղամէքը ։ Եւ Մաթուսա-
ղայ՝ Ղամէքը ծնանելէն ետքը՝ եօ-
թը հարիւր ութսունուերկու տարի
ապրեցաւ, և տղաքներ ու աղջիկ-
27 ներ ծնաւ ։ Եւ Մաթուսաղային
բոլոր օրերը ինը հարիւր վաթսու-
նուինը տարի եղաւ. ու մեռաւ ։
28 Եւ Ղամէք հարիւր ութսուն-
2948
ուերկու տարի ապրեցաւ, ու որդի
ը Ղու. գ. 36 ։ Եբր. ժա. 7 ։ ա Պետ. գ. 20 ։
* Ա՝ Հանգստութիւն ։
29 մը ծնաւ. Եւ անոր անունը ը*Նոյ
դրաւ՝ ըսելով. Ասիկայ մեզ պիտի
հանգստացընէ մեր գործքերէն ու
մեր ձեռքերուն աշխատութենէն՝
թ որ Տէրոջը անիծած երկրին պատ-
թ Գլ. գ. 17 ։ դ. 11 ։
30 ճառաւը կը կրենք ։ Եւ Ղամէք՝ Նոյը
ծնանելէն ետքը՝ հինգ հարիւր իննս-
սունուհինգ տարի ապրեցաւ, և
2353
31 տղաքներ ու աղջիկներ ծնաւ ։ Եւ
Ղամէքին բոլոր օրերը եօթը հա-
րիւր եօթանասունուեօթը տարի
եղաւ. ու մեռաւ ։

32 Եւ Նոյ հինգ հարիւր տարեկան
եղաւ. և Նոյ ծնաւ ծՍէմը, Քամը
ու ԼՅաբեթը ։

ԳԼ. Զ

1 Մարդոց չարութիւնը շատնալուն համար՝ Աստուած ջրհեղեղը կը սպառնայ ։ 8 Նոյ շնորհք կը գտնէ Աստուծոյ առջևը ։ 14 Տապանին շինութիւնը ։

1 Եւ եղաւ որ ᵃերբ մարդիկ երկրի
վրայ շատնալ սկսեցին, ու իրենց
2 աղջիկներ ծնան, Աստուծոյ որդիքը
մարդոց աղջիկներուն գեղեցիկ ըլ-
լալը տեսնելով՝ ᵇամէն իրենց ընտ-
րածներէն իրենց կնիկներ կ'առնէ-
3 ին ։ Եւ Տէրը ըսաւ. ᶜԻմ հոգիս
միշտ մարդու վրայ պիտի ᵈչմնայ.
ᵉվասն զի անիկայ մարմին է. բայց
անոր օրերը հարիւր քսան տարի
4 ըլլայ ։ Այն օրերը երկրի մէջ հսկա-
ներ կային. և անկէ ետքն ալ երբոր
Աստուծոյ որդիքը մարդոց աղջիկ-
ներուն կը մտնէին, որոնք անոնց
զաւակներ կը ծնանէին, ասոնք 'ի
վաղուց հետէ զօրաւոր ու անուանի
5 մարդիկ էին ։ Եւ Տէրը երբոր
տեսաւ որ մարդոց չարութիւնը
երկրի վրայ կը շատնար, և ᶠանոնց
սրտին խորհուրդներուն բոլոր գա-
ղափարները միայն չար էին ամէն
6 օր, Տէրը երկրի վրայ մարդը ստեղ-
ծելուն զղջաց, ու ᵍիր սրտին
7 մէջ տրտմեցաւ. Եւ Տէրը ըսաւ.
Երկրին վրայէն ջնջեմ մարդը՝ որ
ստեղծեցի, մարդէն մինչև անա-
սունները, և սողունները, ու եր-
կինքին թռչունները. ինչու որ
զանոնք ստեղծելուս կը զղջամ ։
8 Բայց Նոյ ʰՏէրոջը առջևը շնորհք
գտաւ ։
9 ‡Աս է Նոյին պատմութիւնը.
ⁱՆոյ իր դարուն մարդոցը մէջ արդար
ու կատարեալ մարդ մըն էր. Նոյ
10 ʲԱստուծոյ հետ քալեց ։ Եւ Նոյ
ծնաւ իրեք որդի, ᵏՍէմը՝ Քամը ու
11 Յաբեթը ։ Ու երկիրը ˡԱստուծոյ
առջևը ապականեցաւ, ու ᵐերկիրը
12 անիրաւութեամբ լեցուեցաւ ։ Եւ
Աստուած ⁿերկրի վրայ նայեցաւ,
և ահա՝ ապականած էր. ինչու որ
երկրի վրայ ամէն մարմին իր ճամ-
13 բան ապականեր էր ։ Եւ Աս-
տուած ըսաւ Նոյին. Բոլոր մար-
միններուն ᵒվերջը հասած է իմ առջևս.
ինչու որ երկիրը անոնց ‖միջոցովը
անիրաւութեամբ լեցուեցաւ. և
ᵖահա՝ ես զանոնք երկրէն հետ պիտի
14 աւրեմ ։ Արդ՝ դուն քեզի §խիժա-
բեր փայտէ տապան մը շինէ. տա-
պանին մէջ խորշեր շինէ, և զանի-
կայ ներսէն ու դուրսէն ձիւթով
15 ծեփէ՛ ։ Եւ աս ձևով շինես անի-
կայ, տապանին երկայնութիւնը
իրեք հարիւր կանգուն, լայնու-

Ն. Ք. ԴՓ.
2448
ծ Գլ. զ. 10 ։
Լ Գլ. ժ. 21 ։
ա Գլ. ա. 28 ։
ᵇ բ Օր. է. 3, 4 ։
ᶜ Գաղ. ե. 16, 17 ։ ա Պետ. գ. 19, 20 ։
ᵈ Եբր. չոր-րէ.
ᵉ Սաղ. հը. 39 ։
ᶠ Գլ. ը. 21 ։ բ Օր. իթ. 19 ։ Առակ. զ. 18 ։ Մատ. ժե. 19 ։
ᵍ Տեառն Թուոց ... իգ. 19 ։ ա Թագ. ժե. 11, 29 ։ բ Թագ. իդ. 16 ։ Մաղ. գ. 6 ։ Յակ. ա. 17 ։
ᵍ Ես. կգ. 10 ։ Եփե. դ. 30 ։
ʰ Գլ. ժթ. 19 ։ Ել. լգ. 12, 13, 16, 17 ։ Ղու. ա. 30 ։ Գոր. է. 46 ։
‡ Եբր. Ասոնք են Նոյի ծնունդները.
ⁱ Գլ. է. 1 ։ Եզեկ. ժդ. 14, 20 ։ Հռով. ա. 17 ։ Եբր. ժա. 7 ։ բ Պետ. բ. 5 ։
ʲ Գլ. ե. 22 ։
ᵏ Գլ. ե. 32 ։
ˡ Գլ. է. 1 ։ ժ. 9 ։ ժգ. 13 ։ բ Մն. լդ. 27 ։ Ղու. ա. 6 ։ Հռով. բ. 13 ։ գ. 19 ։
ᵐ Եզեկ. ը. 17 ։ իը. 16 ։ Ամբ. բ. 8, 17 ։
ⁿ Գլ. ժը. 21 ։ Սաղ. ժդ. 2 ։ լգ. 13, 14 ։ ծգ. 2, 3 ։
ᵒ Երեմ. ծա. 13 ։ Եզեկ. է. 2, 3, 6 ։ Ամով. ը. 2 ։ ա Պետ. դ. 7 ։
‖ Եբր. երեսէն
ᵖ Հմր 17 ։
§ Կամ՝ նոճիի

Ն. Ք. ԳՔ. 2448

* Կամ՝ յարկ

ձ Հմր 13: Գլ. է. 4, 21, 22, 23: բ Պետ. բ. 5:

ղ Գլ. է. 1, 7, 13: ա Պետ. գ. 20: բ Պետ. բ. 5:

ճ Գլ. է. 8, 9, 15, 16:

մ Գլ. է. 9, 15: Տե՛ս Գլ. բ. 19:

յ Եբր. ժա. 7: Տե՛ս Ել. խ. 16:

ն Գլ. է. 5, 9, 16:

թիւնը յիսուն կանգուն, և բարձ-
րութիւնը երսուն կանգուն ըլլայ։
16 Տապանին *լուսամուտ շինես, ու
զանիկայ մէկ կանգունի չափով
լմնցընես վերէն. և տապանին
դուռը մէկ կողմէն դնես. ներքնա-
տունով, միջնատունով ու վերնա-
17 տունով շինես անիկայ։ Եւ [ձ]Ես
ահա՛ երկրի վրայ ջրհեղեղ պիտի
բերեմ, երկինքին տակը կենդանու-
թեան շունչ ունեցող բոլոր մար-
մինը կորսընցընելու համար. երկրի
վրայ ի՛նչ որ կայ՝ պիտի սատկի։
18 Բայց քեզի հետ իմ ուխտս պիտի
հաստատեմ, ու [ղ]տապանը պիտի
մտնես, դուն ու քու որդիքդ. և
կնիկդ ու որդւոցդ կնիկները քու
19 հետդ։ Եւ ամէն անասուններէն՝
ամէն մարմինէն՝ [ճ]ամէնէն երկերկու
հատ տապանը բերես, որ քեզի հետ
ողջ մնան. արու և էգ ըլլան անոնք։
20 Թռչուններէն իրենց տեսակին պէս,
և ընտանի անասուններէն իրենց տե-
սակին պէս, երկրի բոլոր սողուն-
ներէն՝ իրենց տեսակին պէս, ամե-
նէն երկերկու հատ [մ]քեզի պիտի
21 գան՝ ողջ մնալու համար։ Եւ
դուն ա՛ռ քեզի ամէն ուտելիքներէն՝
որ կ'ուտուին, ու քո՛վդ ժողվէ, որ
22 քեզի ու անոնց ուտելիք ըլլայ։ Եւ
ըրաւ Նոյ՝ [յ]Աստուծոյ իրեն բոլոր
պատուիրածին պէս, [ն]այնպէս ը-
րաւ։

ԳԼ. Է

1 Նոյ իր ընտանիքովը ու ամէն տեսակ կենդանի-ներով տապանը կը մտնէ։ 17 Ջրհեղեղին սկիզբը և տեւողութիւնը։

2349

ա Հմր 7, 13: Մատ. իդ. 38: Ղկ. ժէ. 26: Եբր. ժա. 7: ա Պետ. գ. 20: բ Պետ. բ. 5:

բ Գլ. ը. 20: Սաղ. ԼԴ. 18, 19: Առակ. ժ. 9: բ Պետ. բ. 9:

գ Հմր 8: Ղեւ. ժա:

դ Ղեւ. ժ. 10: Եզեկ. խդ. 23:

ե Հմր 12, 17:

զ Գլ. զ. 22:

2349

է Հմր 1:

1 Եւ Տէրը ըսաւ Նոյին. [ա]Դուն քու
բոլոր տունովդ տապա՛նը մտիր.
ինչու որ աս դարուս մարդոցը մէջ
քեզ իմ առջևս արդար տեսայ։
2 Ամէն [բ]մաքուր անասուններէն քեզի
եօթնական հատ առնես՝ արու և
էգ. իսկ [գ]անմաքուր անասուններէն
3 երկերկու հատ՝ արու և էգ։ Եր-
կինքի թռչուններէն ալ եօթնական
հատ [դ]առնես՝ արու և էգ, բոլոր երկ-
րի վրայ անոնց սերունդը ողջ պահե-
4 լու համար։ Ինչու որ եօթը օրէն
ետքը՝ երկրի վրայ [ե]քառասուն օր ու
քառասուն գիշեր անձրև պիտի բե-
րեմ, և ամէն էակը՝ որ ըրի, երկ-
5 րին վրայէն պիտի ջնջեմ։ Եւ [զ]Նոյ՝
Տէրոջը բոլոր իրեն պատուիրածին
6 պէս ըրաւ։ Եւ ջրհեղեղը երկրի
վրայ եղած ատենը՝ Նոյ վեց հարիւր
7 տարեկան էր։ Եւ [է]Նոյ ու իր որ-
դիքը, և իր կնիկը ու իր որդւոցը
կնիկները իր հետը՝ ջրհեղեղին ջու-
րերուն պատճառաւը տապանը
8 մտան։ Մաքուր անասուններէն,
ու անմաքուր անասուններէն, և
թռչուններէն, ու երկրի վրայ
9 ամէն սողացողներէն՝ Զոյգ զոյգ
արու և էգ տապանին մէջ Նոյին
գացին, ինչպէս որ Աստուած Նոյին
10 պատուիրած էր։ Եւ եղաւ որ
եօթը օրէն ետքը՝ ջրհեղեղին ջու-
11 րերը երկրի վրայ եկան։ Նոյին
կենացը վեց հարիւրերորդ տարին՝
երկրորդ ամիսը՝ ամսուն տասնու-
եօթներորդ օրը՝ նոյն օրը [ը]մեծ ան-
դունդին բոլոր աղբիւրները ճեղ-
քուեցան, ու [թ]երկնից պատուհան-
12 ները բացուեցան. Ու [ժ]երկրի վրայ
քառասուն օր ու քառասուն գիշեր
13 անձրև եկաւ։ Ճիշդ նոյն օրը՝
[ի]Նոյ, և Նոյին որդիները՝ Սէմ ու
Քամ և Յաբեթ, և Նոյին կնիկը,
ու անոր որդւոցը իրեք կնիկները
14 անոնց հետ տապանը մտան. [լ]Ա-
նոնք, ու բոլոր գազանները իրենց
տեսակին պէս, և բոլոր ընտանի
անասունները իրենց տեսակին պէս,
ու երկրի վրայ սողացող բոլոր
սողունները իրենց տեսակին պէս, և
բոլոր թռչունները իրենց տեսակին
պէս, ամէն տեսակ թեւաւոր թռ-
15 չուն, կենդանութեան շունչ ունե-
ցող ամէն մարմինէն երկերկու հատ
16 Նոյին քով [խ]տապանը մտան։ Եւ
մտնողները արու և էգ մտան
ամէն մարմինէն, [ծ]ինչպէս որ Աս-
տուած անոր պատուիրեր էր. և
Տէրը անոր ետևէն դուռը գոցեց։
17 [կ]Ու երկրի վրայ քառասուն օր ջրհե-
ղեղ եղաւ. և ջուրերը շատցան, ու
տապանը վերցուցին, և անիկայ
18 երկրէն բարձրացաւ։ Եւ ջուրերը
զօրացան, ու խիստ շատցան երկրի
վրայ. ու [հ]տապանը ջուրերուն երե-
19 սին վրայ կը պտըտէր։ Եւ ջու-
րերը երկրի վրայ խիստ շատ զօրա-
ցան, ու բոլոր երկինքին տակը եղող
[ձ]ամէն բարձր լեռները ծածկուեցան։
20 Ջուրերը տասնըհինգ կանգուն
վեր բարձրացան, և լեռները ծած-
21 կուեցան։ [ղ]Ու երկրի վրայ շարժող
ամէն մարմին՝ թէ՛ թռչուն, թէ
անասուն, թէ գազան, և թէ երկ-
րի վրայ սողացող ամէն սողուն, և
22 ամէն մարդ մեռաւ։ Ցամաքի վը-
րայ եղող ամէնը՝ որ [ճ]քիթին ծակե-
րը կենդանութեան շունչ ունէր,
23 ամէնն ալ մեռան։ Ու երկրի երե-
սին վրայ եղող ամէն էակը ջնջուե-
ցաւ, մարդէն մինչև անասունը,
սողունէն մինչև երկինքի թռչունը.
անոնք երկրէն ջնջուեցան. ու [մ]միայն
Նոյ մնաց՝ և իրեն հետ տապանին
24 մէջ եղողները։ [յ]Եւ ջուրերը երկ-
րի վրայ հարիւր յիսուն օր [ն]բարձրա-
ցած մնացին։

ԳԼ. Ը

1 Ջուրերը քաշուելով։ 4 տապանը Արարատ լեռներուն վրայ կը նստի։ 7 Նոյ կ'արձակէ

Ն. Ք. ԳՔ. 2349

ը Գլ. ը. 2: Առակ. ը. 28: Եզեկ. իզ. 19:

թ Գլ. ա. 7: ը. 2: Սաղ. ՀԸ. 23:

ժ Հմր 4, 17:

ի Հմր 1, 7: Գլ. զ. 18: Եբր. ժա. 7: ա Պետ. գ. 20: բ Պետ. բ. 5:

լ Հմր 2, 3, 8, 9:

խ Գլ. զ. 20:

ծ Հմր 2, 3:

կ Հմր 4, 12:

հ Սաղ. ճդ. 26:

ձ Սաղ. ճդ. 6: Երեմ. գ. 23:

ղ Գլ. զ. 13, 17: Հմր 4: Յոբ. իբ. 16: Մատ. իդ. 39: Ղու. ժէ. 27: բ Պետ. գ. 6:

ճ Գլ. բ. 7:

մ ա Պետ. գ. 20: բ Պետ. բ. 5: գ. 6:

յ Գլ. ը. 3: Բաղդատէ Հմր 11, Գլ. ը. 4 ին հետ:

ն Եբր. Զօրացան:

Ն. Ք. ԶՔ. 2349

ագռաւը ու աղաւնին . 15 Աստուծոյ հրամանովը տապանէն դուրս կ'ելլէ . 20 սեղան շինելով զոհ կը մատուցանէ ։ 21 Աստուած անոր զոհը կ'ընդունի , ու խօսք կու տայ որ մէյմըն ալ երկիրը չանիծէ ։

ա Գլ. ժթ. 29 ; Ել. բ. 24 ; ա Թագ. ա. 19 ։
բ Ել. ժդ. 21 ։
գ Գլ. է. 11 ։
դ Յոբ. լը. 37 ։
ե Գլ. է. 24 ։

1 Եւ Աստուած յիշեց [ա] Նոյը ու անոր
հետ տապանին մէջ եղած բոլոր
գազանները ու բոլոր անասուննե-
րը . և [բ] Աստուած երկրի վրայ հով
մը բերաւ , ու ջուրերը նուազե-
2 ցան ։ Նաև [գ] անդունդին աղբիւր-
ները ու երկինքին պատուհանները
գոցուեցան , և [դ] երկինքէն անձրևը
3 կտրեցաւ ։ Ու երթալով ջու-
րերը երկրին վրայէն կը քաշուէին ,
ու [ե] հարիւր յիսուն օրէն ետքը
4 ջուրերը քիչցան ։ Եւ եօթներորդ
ամիսը՝ ամսուն տասնուեօթներորդ
օրը՝ տապանը Արարատ լեռներուն
5 վրայ նստաւ ։ Եւ ջուրերը երթա-
լով կը քիչնային մինչև տասնե-
րորդ ամիսը . * տասներորդ ամ-
սուն առաջին օրը՝ լեռներուն գլուխ-
ները երևցան ։
6 Ու եղաւ որ քառասուն օրէն
ետքը , Նոյ իր շինած տապանին
7 [զ] պատուհանը բացաւ . Եւ ագռաւը
արձակեց , որ անդին ասդին կը
պտըտէր՝ մինչև երկրին վրայէն
8 ջուրերուն ցամքիլը ։ Աղաւնին
ալ արձակեց , որ տեսնէ թէ ար-
դեօք երկրին վրայէն ջուրերը քիչ-
9 ցած են . Բայց աղաւնին իր
ոտքին թաթը դնելու տեղ չգըտ-
նաւ ու դէպ 'ի անոր՝ տապանը
դարձաւ . ինչու որ բոլոր երկրին
երեսը ջուրեր կային . ան ատենը
իր ձեռքը երկընցուց ու առաւ զա-
նիկայ , և իր քովը տապանին մէջ
10 բերաւ ։ Ու եօթը օր ալ սպասեց ,
և նորէն աղաւնին տապանէն արձա-
11 կեց ։ Ու իրիկուան դէմ աղաւնին
անոր եկաւ , և ահա՛ իր բերանը
ձիթենիի * փրցուած տերև մը կար .
ուստի Նոյ գիտցաւ որ ջուրերը
12 երկրին վրայէն քիչցած են ։ Եւ
եօթը օր ալ սպասեց , ու նորէն
աղաւնին արձակեց , որ ալ անոր
չդարձաւ ։

զ Գլ. Զ. 16 ։
* կամ թփէն

2348

13 Եւ եղաւ որ Նոյին կեանքը վեց
հարիւր ու մէկ տարին՝ առաջին
ամսուն առաջին օրը՝ ջուրերը երկ-
րին վրայէն ցամքեցան . և Նոյ
տապանին ծածկոցը վերցուց ու
նայեցաւ , և ահա՛ երկրին երեսը
14 ցամքեր էր ։ Ու երկրորդ ամիսը՝
ամսուն քսանուեօթներորդ օրը
երկիրը չորցաւ ։
15 Եւ Աստուած խօսեցաւ Նոյին ,
16 ու ըսաւ . Տապանէն դո՛ւրս ելիր ,
[է] դուն՝ ու քու կնիկդ և քու որդիքդ
և քու որդւոցդ կնիկները քեզի հետ ։
17 Քու հետդ եղող [ը] ամէն կենդանին
ամէն մարմինէն՝ թէ թռչունները ,
թէ անասունները , և թէ երկրի
վրայ սողացող բոլոր սողունները
քու հետդ հանէ , որ [թ] երկրի վրայ
բազմանան ու երկրի վրայ աճին
18 ու շատնան ։ Եւ Նոյ ու իր որ-
դիքը և իր կնիկը ու իր որդւոցը
19 կնիկները՝ իր հետը ելան . Ամէն
անասուն , ամէն սողուն ու ամէն
թռչուն՝ երկրի վրայ ամէն շարժող-
ները իրենց տեսակին պէս տապա-
նէն ելան ։

է Գլ. է. 13 ։
ը Գլ. է. 15 ։

Ն. Ք. ԶՔ. 2348

թ Գլ. ա. 22 ։

20 Եւ Նոյ սեղան մը շինեց Տէրոջը ,
ու [ժ] ամէն մաքուր անասունէն և
ամէն մաքուր թռչունէն առաւ ,
ու սեղանին վրայ ողջակէզներ մա-
21 տուց ։ Եւ Տէրը [ի] անուշ հոտը
հոտուըտաց , և Տէրը իր սրտին մէջ
ըսաւ . Ալ ասկէ ետև մարդուն
համար նորէն [լ] երկիրը պիտի չանի-
ծեմ , † թէև մարդուն [խ] սրտին խոր-
հուրդը իր մանկութենէն չար է ,
[ծ] ո՛չ ալ նորէն պիտի զարնեմ ամէն
կենդանի մարմինը , ինչպէս որ ըրի ։
22 [կ] Քանի՛ որ երկիրը կը մնայ , սերմ
ու հունձք , ցուրտ ու տաքութիւն ,
ամառ ու ձմեռ , և [հ] ցորեկ ու գիշեր
պիտի չդադարին ։

ժ Ղև. ժա. ։
ի Ղև. ա. 9 ; Եզեկ. ի. 41 ; բ Կոր. բ. 15 ; Եփես. ե. 2 ։
լ Գլ. գ. 17 ; զ. 17 ։
† Կամ՝ ինչու որ
խ Գլ. զ. 5 ; Յոբ. ժդ. 4 ; ժե. 14 ; Սաղ. ծա. 5 ; Երեմ. ժէ. 9 ; Մատ. ժե. 19 ; Հռովմ. ա. 21 ; գ. 23 ։
ծ Գլ. թ. 11, 15 ։
կ Եսա. ծդ. 8 ։
հ Երեմ. լգ. 20, 25 ։

## ԳԼ. Թ

1 Նոյ Աստուծմէ կ'օրհնուի . 5 Մարդասպանութիւնը սաստիկ կ'արգիլուի ; 8 Աստուծոյ ուխտը , 13 որուն իբրև նշան՝ ծիածանը կը դրուի ; 18 Նոյի սերունդը կը բազմանայ ; 20 Նոյ այգի կը տնկէ , 21 ու կը գինովնայ , և իր քամ որդիէն ծաղր կ'ըլլայ ; 25 Քանանը կ'անիծուի . 26 Սէմը՝ 27 ու Յաբեթը կ'օրհնուին . 29 Նոյի մահը ։

1 Եւ Աստուած օրհնեց Նոյը՝ ու
անոր որդիները , և ըսաւ ա-
նոնց . [ա] Աճեցէ՛ք ու շատցէ՛ք , ու
2 երկիրը լեցուցէ՛ք . Եւ [բ] ձեր վախը ու
երկիւղը երկրի բոլոր գազաններուն
վրայ , ու երկինքի բոլոր թռչ-
չուններուն վրայ պիտի ըլլայ .
անոնք երկրի վրայ բոլոր շարժող-
ներուն հետ , ու ծովու բոլոր ձու-
կերուն հետ ձեր ձեռքը տրուած են ։
3 [գ] Ամէն շարժուն կենդանին ձեզի կե-
րակուր ըլլայ . [դ] ամէնը ձեզի [ե] բան-
4 ջարի պէս տուի ։ [զ] Բայց միսը
ողջութիւնովը՝ այսինքն անոր արիւ-
5 նովը չուտէք ։ Եւ անշուշտ ձեր
կենացը համար՝ արիւննիդ պիտի
խնդրեմ . [է] ամէն գազանին ձեռքէն՝
ու [ը] մարդուն ձեռքէն պիտի խընդ-
րեմ ան . մարդուն կեանքը [թ] եղբօ-
6 րը ձեռքէն պիտի խնդրեմ ։ [ժ] Ո՛վ
որ մարդու արիւն կը թափէ , իր
արիւնն ալ մարդէ պիտի թափուի .
[ի] ինչու որ Աստուած իր պատկերին
7 պէս ստեղծեց մարդը ։ Եւ դուք
[լ] աճեցէ՛ք ու շատցէ՛ք , երկրի վրայ
բազմացէ՛ք ու անոր մէջ շատցէ՛ք ։
8 Եւ Աստուած խօսեցաւ Նոյին՝
ու անոր որդւոցը անոր հետ՝ ըսե-

ա Գլ. ա. 28 ; Հմր 7 ; 19 ; Գլ. ժ. 32 ։
բ Գլ. ա. 28 . Ովս. բ. 18 ։
գ բ Օր. ժբ. 15 ; ժդ. 3, 9, 11 ; Գոր. ժ. 12, 13 ։
դ Հռով. ժդ. 14, 20 ; ա Կոր. ժ. 23, 26 ; Կող. բ. 16 ; ա Տիմ. դ. 3, 4 ։
ե Գլ. ա. 29 ։
զ Ղև. ժէ. 10, 11, 14 ; ժթ. 26 ; բ Օր. ժբ. 23 ; ա Թագ. ժդ. 34 ; Գոր. ժե 20, 29 ։
է Ել. իա 28 ։
ը Գլ. դ. 9, 10 ; Սաղ. թ. 12 ։
թ Գոր. ժէ. 26 ։
ժ Ել. իա. 12, 14 ; Ղև. իդ. 17 ; Մատ. իզ. 52 ; Յայտ. ժգ. 10 ։
ի Գլ. ա. 27 ։
լ Հմր. 1, 19 ; Գլ. ա. 28 ։

Ն. Ք. ԶՔ.
2348

ա Գլ. Զ. 18։ բ Եսայ. Ծդ. 9։ ( Սաղ. Ճխե. 9։
գ Եսայ. Ծդ. 9։
դ Գլ. ԺԷ. 11։
ե Եւ. ԻԸ. 12։ Ղկ. ԻԶ. 42, 45։ Եզեկ. ԺԶ. 60։
զ Գլ. ԺԷ. 13, 19։

9 լով. Եւ ես ահա ձեզի հետ՝ ու
ձեզմէ ետքը ձեր սերունդին հետ
10 իմ ուխտս պիտի հաստատեմ, Եւ
ձեզի հետ եղող ամէն շնչաւոր
կենդանիին հետ, թէ՛ թռչունին,
թէ անասունին, և թէ ձեզի հետ
եղող երկրի ամէն գազանին հետ,
տապանէն ելածներուն ամենուն
հետ, ու երկրի բոլոր անասուննե-
11 րուն հետ ։ Եւ ձեզի հետ իմ
ուխտս պիտի հաստատեմ, որ
մէյմըն ալ ամէն մարմին ջրհեղեղին
ջուրերէն չկորսուի. ո՛չ ալ նորէն
ջրհեղեղ ըլլայ երկիրը աւրելու
12 համար ։ Եւ ըսաւ Աստուած.
Իմ ու ձեր մէջը, և ձեզի հետ ե-
ղող ամէն շնչաւոր կենդանիին մէ-
ջը՝ յաւիտենական դարերու համար
13 ըրած ուխտիս նշանը աս է. Իմ
աղեղս ամպին մէջ պիտի դնեմ,
և ան պիտի ըլլայ իմ ու երկրի
մէջտեղը եղած ուխտին նշանը ։
14 Եւ պիտի ըլլայ որ՝ երբոր երկրի
վրայ ամպ բերեմ, աղեղը ամպին
15 մէջ պիտի տեսնուի. Եւ իմ ու
ձեր մէջտեղը, ու ամէն մարմի-
նէն ամէն շնչաւոր կենդանիին մէջ-
տեղը եղած իմ ուխտս պիտի յի-
շեմ. և մէյմըն ալ ամէն մարմինը
կորսնցընելու համար՝ ջուրերը
16 հեղեղ պիտի չըլլան ։ Եւ աղեղը
ամպին մէջ պիտի ըլլայ, ու անոր
պիտի նայիմ, որ Աստուծոյ՝ ու
երկրի վրայ եղող ամէն մարմինէն
բոլոր կենդանի անասունին մէջ-
տեղը եղած յաւիտենական ուխտը
17 յիշեմ ։ Եւ Աստուած Նոյին ը-
սաւ. Աս է ան ուխտին նշանը՝
որն որ ես հաստատեցի իմ ու երկրի
վրայ եղող ամէն մարմինին մէջ-
տեղը ։

2347

է Գլ. Ժ. 6։ ը Գլ. Ե. 32։ թ Գլ. Ժ. 32։ ա Մն. ա. 4, &c.։
ժ Գլ. Գ. 19, 23։ Դ. 2։ Առակ. ԺԲ. 11։
ի Առակ. Ի. 1։ ա Կոր. Զ. 12։
լ Եւ. Ի. 12։ Գաղ. Զ. 1։
խ Բ Օր. ԻԷ. 16։

18 Եւ Նոյին որդիքը՝ որոնք տա-
պանէն ելան, Սէմ, Քամ ու
Յաբեթ էին. և Քամ՝ Քանանու
19 հայրն էր. Աս իրեքը Նոյի որդիքն
էին, և ասոնցմէ բոլոր երկիրը
տարածուեցան ։
20 Եւ Նոյ սկսաւ երկիրը գործել,
21 ու այգի տնկեց. Եւ գինիէն խմեց,
ու գինովցաւ, և իր վրանին մէջը
22 մերկացաւ ։ Ու Քանանու հայրը
Քամ՝ իր հօրը մերկութիւնը տե-
սաւ, ու դուրս ելաւ իր երկու եղ-
23 բայրներուն պատմեց ։ Եւ Սէմ
ու Յաբեթ հանդերձ առին, և
իրենց երկուքին ուսերուն վրայ դը-
րին, ու ետ ետ երթալով իրենց
հօրը մերկութիւնը ծածկեցին. և
իրենց երեսը ետևնուն դարձած ըլ-
լալով՝ իրենց հօրը մերկութիւնը
24 չտեսան ։ Եւ Նոյ իր գինիէն ար-
թըննալով՝ իր պզտիկ տղուն իրեն
25 ըրածը իմացաւ. Ու ըսաւ. Անի-
ծեա՛լ ըլլայ Քանանը. ծառաներու
ծառայ ըլլայ իր եղբայրներուն ։
26 Նաև ըսաւ. Օրհնեա՛լ ըլլայ Սէ-
մին Տէր Աստուածը. և Քանան ա-
27 նոր ծառան ըլլայ ։ Աստուած թող
ընդարձակէ՝ Յաբեթը, ու Սեմին
վրանները բնակի, և Քանան *անոր
ծառան ըլլայ ։
28 Ու Նոյ ջրհեղեղէն ետքը՝ իրեք
հարիւր յիսուն տարի ապրեցաւ ։
29 Եւ Նոյին բոլոր օրերը ինը հարիւր
յիսուն տարի եղաւ. ու մեռաւ ։

ԳԼ. Ժ

1 Նոյի ծնունդները ։ 2 Յաբեթի որդիքը ։ 6 Քամի որդիքը ։ 8 Նեբրովթ առաջին թագաւորը ։ 21 Սեմի որդիքը ։

1 Եւ Նոյի որդւոցը՝ Սեմին, Քամին
ու Յաբեթին ծնունդները ասոնք
են. ու ջրհեղեղէն ետքը անոնց
որդիներ ծնան ։
2 Յաբեթին որդիքը՝ Գոմեր, Մա-
գոգ, Մադայ, Յաւան, Թոբէլ,
3 Մոսոք ու Թիրաս էին ։ Եւ Գոմե-
րին որդիքը՝ Ասքանազ, Րիփաթ ու
4 Թորգոմա էին ։ Եւ Յաւանին
որդիքը՝ Եղիսայ, Թարսիս, Կի-
5 տացիք ու †Դոդացիք էին ։ ‡Ազգաց
կղզիները իրենց երկիրներովը՝ ամէն
մէկը իր լեզուին պէս՝ ազգերուն մէջ
իրենց տոհմերովը ասոնցմէ բաժ-
նուեցան ։
6 Եւ Քամին որդիքը՝ Քուշ,
Մեստրեմ, Փուդ ու Քանան էին ։
7 Եւ Քուշին որդիքը՝ Սաբա, Եւիլա,
Սաբաթա, Ռեգմա ու Սեբեթա-
քա էին ։ Եւ Ռեգմային որդիքը՝
8 Սաբա ու Դեդան էին ։ Եւ Քուշ
ծնաւ Նեբրովթը. ասիկայ սկսաւ
9 երկրի վրայ զօրաւոր ըլլալ ։ Ասի-
կայ Տէրոջը առջևը զօրաւոր որ-
սորդ մըն էր. անոր համար կ'ըսուի.
Տէրոջը առջևը Նեբրովթին պէս
10 զօրաւոր որսորդ ։ Եւ իր թագա-
ւորութեանը սկիզբը Բաբելոն և
Արեք ու Աքադ և Քաղանէ էր
11 Սենաար երկրին մէջ ։ Ան երկրէն
‡Ասորեստան գնաց. ու Նինուէն,
և Ռոբովթ քաղաքը ու Քաղան
12 շինեց. Նինուէին ու Քաղային մէջ-
տեղը Ռեսէնն ալ շինեց. ասիկայ
13 մեծ քաղաք մըն էր ։ Եւ Մեստ-
րեմ ծնաւ Ղուդացիները, Անա-
մացիները. Ղաբացիները, Նեփ-
14 թուքացիները. Պաթուրեսացինե-
րը, ու Քասղուքացիները, (Լուս-
կից որ Փղշտացիք ելան.) ու Կափ-
15 թորացիներն ալ ։ Եւ Քանան
ծնաւ իր անդրանիկը Սիդոնը, նաև
16 Քետը. Յեբուսացին, Ամորհացին,
17 Գերգեսացին Խևացին, Արուկե-
18 ցին, Ասենացին, Արուադացին,
Սամարացին և Ամաթացին. ու
ետքը Քանանացւոց ցեղերը տարա-

Ն. Ք. ԶՔ.
2347

կ Յես. Թ. 23։ գ Թագ. Թ. 20, 21։
ա Սաղ. Ճխդ. 15։ Եբր. ԺԱ. 16։
* Եփե. Բ. 13, 14։ Գ. 6։
* Կամ՝ անոնց
1998

ա Գլ. Թ. 1, 7, 19։
բ ա Մն. ա. 5, &c.։
† Կամ՝ Ռոդացիք
‡ Սաղ. ՀԲ. 10։ Երեմ. Բ. 10։ Իե. 22։ Սոփ. Բ. 11։
դ ա Մն. ա. 8, &c.։
Իբր 2218
ե Գլ. Զ. 11։ զ Երեմ. ԺԶ. 16։ Միք. Է. 2։
է Միք. Ե. 6։
‡ Եբր. Ասուր
ը ա Մն. ա. 12։

19 ծուեցան։ Եւ ʳ Քանանացւոց սահ-
մանը՝ Սիդոնէն Գերարա անցնելով
մինչև Գազա, Սոդոմ ու Գոմոր,
և Ադմա, ու Սեբոյիմէն մինչև
20 Ղասա է։ Քամին որդիքը՝ իրենց
տոհմերովը, իրենց լեզուներովը,
իրենց երկիրներուն ու ազգերուն
մէջ ասոնք են։
21 Եւ Յաբեթին մեծ եղբօրը Սեմին
ալ, որ Եբերին բոլոր որդւոցը հայրն
22 էր, որդիներ ծնան։ Ժ Սեմին որդի-
քը՝ Եղամ, Ասուր, Արփաքսադ,
23 Ղուդ ու Արամ էին։ Եւ Արամին
որդիքը՝ Հուս, Հուլ, Գաթեր ու
24 Մաշ էին։ Եւ Արփաքսադ ծնաւ
Է Սաղան, և Սաղայ ծնաւ Եբերը։
25 Ու Լ Եբերին երկու որդի ծնաւ. մէ-
կուն անունը * Փաղէկ էր. քանզի
երկիրը անոր օրերը բաժնուեցաւ.
և անոր եղբօրը անունը Յեկտան էր։
26 Ու Յեկտան ծնաւ Եղմովդադը, Սա-
27 ղափը, Ասարմօթը, Յարաքը, Ադո-
28 րամը, Ուզալը, Դեկղան, Գեբաղը,
29 Աբիմեէլը, Սաբան, Ոփիրը, Եւիլան
ու Յոբաբը. ամէն ասոնք Յեկտանին
30 որդիքն էին։ Եւ ասոնց բնակու-
թիւնը եղաւ Մեսայէն մինչև Սո-
31 փեր՝ արևելեան լեռը։ Սեմին որդի-
քը՝ իրենց տոհմերովը, իրենց լե-
զուներովը, իրենց երկիրներուն մէջ՝
32 իրենց ազգերովը ասոնք են։ Ի Նոյի
որդւոցը տոհմերը՝ իրենց ծնունդ-
ներուն ու ազգերուն համեմատ
ասոնք են. և ջրհեղեղէն ետքը ազգե-
րը Ծ ասոնցմէ տարածուեցան երկրի
վրայ։

Ն. Ք. ԳՔ. Իբր 2218
Ր Գլ. ԺԴ. 12, 14, 15, 17։ ԺԵ. 18—21։ Թու. ԼԴ. 2—12։ Յես. ԺԲ. 7, 8։
Ժ Ա Մն. Ա. 17, ...։
Է Գլ. ԺԱ. 12։
Լ Ա Մն. Ա. 19։
* Այսինքն՝ բաժանում։
2247
Ի Հմր 1։
Իբր 2247
Ծ Գլ. Թ. 19։

## ԳԼ. ԺԱ

1 Աշխարհի մէջ մէկ լեզու խօսուիլը. 3 Աշտարակաշինութիւնը. 6 և լեզուաց խառնակութիւնը։ 10 Սեմին ազգաբանութիւնը. 27 Աբրամի հօրը Թարային ազգաբանութիւնը. 31 Թարան Ուր քաղաքէն ելնելով Խառան կ'երթայ։

1 Եւ բոլոր երկրին լեզուն մէկ ու
2 խօսուածքը մէկ էր։ Ու եղաւ
որ երբ ա արևելքէն կը չուէին, Սե-
նաար երկրին մէջ դաշտ մը գտան,
3 ու հոն բնակեցան։ Եւ իրարու ը-
սին. Եկէք աղիւսներ շինենք, ու
զանոնք կրակով եփենք։ Եւ աղիւս-
ները անոնց քարի տեղ եղաւ. ու
ծիւթը անոնց ցեխի տեղ եղաւ։
4 Եւ ըսին. Եկէք մեզի քաղաք մը ու
աշտարակ մը շինենք, բ որ անոր
գլուխը մինչև երկինքը հասնի, և մե-
զի անուն ստանանք, որ չըլլայ թէ
5 բոլոր երկրի վրայ ցրուինք։ Եւ
գ Տէրը՝ մարդոց որդիներուն շինած
քաղաքը ու աշտարակը տեսնելու
6 իջաւ։ Եւ Տէրը ըսաւ. Ահա դ ա-
սոնք մէկ ժողովուրդ մըն են, ու
ե ամենուն լեզուն մէկ է. և ասի-
կայ շինելու սկսեցին. ու հիմա
ինչ որ շինել կը խորհին, անոնցմէ

Իբր 2247
Ա Գլ. ԺԳ. 11։ Բ Թագ. Գ. 2։ Ա Մն. ԺԳ. 6։
Բ Բ Օր. Ա. 28։
Գ Գլ. ԺԸ. 21։
Դ Գլ. Թ. 19։ Գոր. ԺԷ. 26։
Ե Հմր 1։
Զ Սաղ. Բ. 1։

7 պիտի չարգիլուի։ Է Եկէ՛ք իջնենք,
և անոնց լեզուն հոն խառնա-
կենք, որ համէն մէկը իր ընկերին
8 լեզուն չհասկընայ։ Եւ Տէրը անկէ
Ը բոլոր երկրին երեսը Թ ցրուեց զա-
նոնք. ու քաղաքը շինելէն դադ-
9 րեցան։ Անոր համար անոր անու-
նը † Բաբելոն կոչուեցաւ. Ի ինչու որ
Տէրը հոն բոլոր երկրին լեզուն
խառնակեց, և Տէրը անկէ բոլոր
երկրին երեսը ցրուեց զանոնք։
10 Լ Սեմին ծնունդները ասոնք են.
Սեմը հարիւր տարեկան էր, երբոր
ծնաւ Արփաքսադը ջրհեղեղէն երկու
11 տարի ետքը։ Եւ Սեմ՝ Արփաք-
սադը ծնանելէն ետքը՝ հինգ հա-
րիւր տարի ապրեցաւ, և տղաքներ
12 ու աղջիկներ ծնաւ։ Եւ Արփաք-
սադ երսունըհինգ տարի ապրե-
13 ցաւ, Խ ու ծնաւ Սաղան։ Եւ Ար-
փաքսադ՝ Սաղան ծնանելէն ետքը՝
չորս հարիւր իրեք տարի ապրեցաւ.
և տղաքներ ու աղջիկներ ծնաւ։
14 Եւ Սաղայ երսուն տարի ապրե-
15 ցաւ, ու ծնաւ Եբերը։ Եւ Սա-
ղայ՝ Եբերը ծնանելէն ետքը՝ չորս
հարիւր իրեք տարի ապրեցաւ. և
16 տղաքներ ու աղջիկներ ծնաւ։ Ծ Ու
Եբեր երսունըչորս տարի ապրե-
17 ցաւ, և ծնաւ Փաղէկը։ Ու
Եբեր՝ Փաղէկը ծնանելէն ետքը՝
չորս հարիւր երսուն տարի ապրե-
ցաւ, և տղաքներ ու աղջիկներ
18 ծնաւ։ Եւ Փաղէկ երսուն տարի
ապրեցաւ, ու ծնաւ Ռագաւը։
19 Եւ Փաղէկ՝ Ռագաւը ծնանելէն
ետքը երկու հարիւր ինը տարի
ապրեցաւ. և տղաքներ ու աղ-
20 ջիկներ ծնաւ։ Եւ Ռագաւ եր-
սունըերկու տարի ապրեցաւ, ու
21 ծնաւ Սերուգը։ Եւ Ռագաւ՝
Սերուգը ծնանելէն ետքը՝ երկու
հարիւր եօթը տարի ապրեցաւ. և
22 տղաքներ ու աղջիկներ ծնաւ։ Եւ
Սերուգ երսուն տարի ապրեցաւ,
23 ու ծնաւ Նաքովրը։ Եւ Սերուգ՝
Նաքովրը ծնանելէն ետքը՝ երկու
հարիւր տարի ապրեցաւ, և տը-
24 ղաքներ ու աղջիկներ ծնաւ։ Եւ
Նաքովր քսանըինը տարի ապրե-
25 ցաւ, ու ծնաւ Կ Թարան։ Եւ
Նաքովր՝ Թարան ծնանելէն ետքը՝
հարիւր տասնըինը տարի ապրե-
ցաւ, և տղաքներ ու աղջիկներ
26 ծնաւ։ Եւ Թարայ եօթանասուն
տարի ապրեցաւ, ու Հ ծնաւ Աբ-
րամը, Նաքովրը և Առանը։
27 Եւ Թարային ծնունդները ասոնք
են. Թարայ ծնաւ Աբրամը, Նա-
քովրը ու Առանը. և Առան ծնաւ
28 Ղովտը։ Եւ Առան մեռաւ իր
հօրը Թարային առջևը՝ իր ծննդեան
երկրին՝ Քաղդէացւոց Ուր քաղաքին

Ն. Ք. ԳՔ. Իբր 2247
Է Գլ. Ա. 26։ Սաղ. Բ. 4։ Գոր. Բ. 4, 5, 6։
Ը Գլ. ԽԲ. 23. Բ Օր. ԻԸ. 49։ Երեմ. Ե. 15։ Ա Կոր. ԺԴ. 2, 11։
Թ Գլ. Ժ. 25. 32։
Ժ Ղու. Ա. 51։
† Այսինքն՝ խառնակութիւն։
2346
Ի Ա Կոր. ԺԴ. 23։
2311
Լ Գլ. Ժ. 22։ Ա Մն. Ա. 17։
Խ Տես Ղու. Գ. 36։
2281
Ծ Ա Մն. Ա. 19։
2247
2217
2185
2155
2126
Կ Ղու. Գ. 35։
2056
Հ Յես. ԻԴ. 2։ Ա Մն. Ա. 26։
1996

Ն․ Ք․ ԴՓ․ 1996
Գլ․ ժէ․ 15։ ի․ 12։
Գլ․ իբ․ 20։
Գլ․ ժգ․ 1։ 2։ ժը․ 11։ 12։
Գլ․ ժբ․ 1։
Նեեմ․ Թ․ 7։ Գոր․ է․ 4։
Գլ․ ժ․ 19։
Իբր 1923
1921
Գլ․ ժե․ 7։ Նեեմ․ Թ․ 7։ Եւ․ խա․ 2։ Գոր․ է․ 3։ Եբր․ ժա․ 8։
Գլ․ ժէ․ 6։ ժը․ 18։ Օր․ իզ․ 5։ Գթագ․ գ․ 8։
Գլ․ ըդ․ 35։
Գլ․ իը․ 4։ Գաղ․ գ․ 14։
Գլ․ իէ․ 29։ Եւ․ իդ․ 22։ Թու․ իդ․ 9։
Գլ․ ժը․ 18։ իբ․ 18։ իզ․ 4։ Սաղ․ հբ․ 17։ Գոր․ գ․ 25։ Գաղ․ գ․ 8։
1921
Գլ․ ժա․ 31։
Գլ․ ժգ․ 14։
Բ Օր․ ժա․ 30։ Դատ․ է․ 1։
Եբր․ ժա․ 9։
Գլ․ ժ․ 18, 19։ ժգ․ 7։
Գլ․ ժէ․ 1։
Գլ․ ժգ․ 15։ ժէ․ 8։ Սաղ․ ճե․ 9, 11։
Գլ․ ժգ․ 4։
Գլ․ ժգ․ 4։

29 մէջ ։ Եւ Աբրամ ու Նաքովր ի-
րենց կնիկներ առին․ Աբրամին
կնոջը անունը Սարայ էր, և Նա-
քովրին կնոջը անունը Մեղքա՝ Ա-
ռանին աղջիկը, որ Առան Մեղքա-
30 յին ու Յեսքային հայրն էր ։ Եւ
Սարայ ամուլ էր, ու չէր ծնաներ ։
31 Եւ Թարայ իր որդին Աբրամը՝ ու
իր թոռը Առանին որդին Ղովտը՝
և իր որդւոյն Աբրամին կնիկը իր
հարսը Սարան առաւ, ու անոնց
հետ Քաղդէացւոց Ուր քաղաքէն
ելաւ դէպ 'ի Քանանու երկիրը
երթալու համար․ ու եկան մինչև
32 Խառանը, և հոն բնակեցան ։ Ու
Թարային օրերը երկու հարիւր հինգ
տարի եղան․ և Թարայ Խառանին
մէջ մեռաւ ։

ԳԼ․ ԺԲ

1 Աստուած կը կանչէ Աբրամը, ու կ'օրհնէ զանիկայ ։ 4 Աբրամ Ղովտին հետ Խառանէն կ'ելլէ․ 6 Քանանու երկրէն կ'անցնի ։ 7 Ան երկիրը տեսիլքի մէջ իրեն կը խոստացուի ։ 10 Աբրամ սովի պատճառով Եգիպտոս կ'երթայ․ 11 վախնալով իր կնկանը համար՝ ստութեամբ իր քոյրը ըլլալ կը ձևացընէ ։ 14 Փարաւոն իր քովը բերել կու տայ Սարան, և պատժուելով ետ կը դարձընէ ։

1 Եւ Տէրը ըսաւ Աբրամին․ Քու
երկրէդ, և քու ազգականներէդ,
ու քու հօրդ տունէն գնա՛ ան եր-
կիրը որ ես քեզի պիտի ցուցընեմ․
2 Եւ քեզ մեծ ազգ պիտի ընեմ, ու
քեզ պիտի օրհնեմ, և քու անունդ
պիտի մեծցընեմ․ ու դուն օրհնեալ
3 պիտի ըլլաս ։ Եւ քեզ օրհնողնե-
րը պիտի օրհնեմ, ու քեզ անիծողնե-
րը պիտի անիծեմ․ ու երկրի բոլոր
ազգերը քեզմով պիտի օրհնուին ։
4 Եւ Աբրամ գնաց՝ ինչպէս որ Տէրը
անոր ըսեր էր․ Ղովտն ալ անոր
հետը գնաց․ ու Աբրամ եօթանա-
սունըհինգ տարեկան էր երբոր
5 Խառանէն ելաւ ։ Եւ Աբրամ իր
կնիկը Սարան, ու իր եղբօրորդին
Ղովտը, և իրենց բոլոր ստացուած-
քը, և Խառանին մէջ իրենց ստա-
ցած հոգիները առնելով, ելան որ
Քանանու երկիրը երթան․ և Քա-
6 նանու երկիրը եկան ։ Ու Աբ-
րամ ան երկրէն մինչև Սիւքեմին
տեղը՝ մինչև Մօրէի կաղնին ան-
ցաւ․ և ան ատենը Քանանացիները
7 կային ան երկրին մէջ ։ Եւ Տէրը
երևցաւ Աբրամին, ու ըսաւ․ Քու
սերունդիդ պիտի տամ աս երկիրը ։
Եւ հոն սեղան շինեց Տէրոջը՝ որ
8 իրեն երևցաւ ։ Եւ անկէ դէպ 'ի
Բեթէլին արևելեան կողմը եղող
լեռը չուեց, ու իր վրանը բացաւ,
Բեթէլը արևմտեան կողմը՝ ու Գա-
յին արևելեան կողմը ունենալով․
և հոն Տէրոջը սեղան շինեց, ու
9 Տէրոջը անունը կանչեց ։ Եւ

Աբրամ միշտ դէպ 'ի հարաւ կը
չուէր ։
10 Ու ան երկրին մէջ սով եղաւ․ և
Աբրամ Եգիպտոս իջաւ հոն պան-
դխտանալու համար․ ինչու որ ան
11 երկրին մէջ սովը սաստիկ էր ։ Ու
եղաւ որ՝ երբ Եգիպտոս մտնելու
մօտեցաւ, իր կնոջը Սարային ը-
սաւ․ Ահա՛ գիտեմ որ դուն գե-
12 ղեցիկ տեսքով կնիկ մըն ես․ Եւ
պիտի ըլլայ որ երբ Եգիպտացիք
քեզ տեսնեն, պիտի ըսեն․ Ասիկայ
անոր կնիկն է․ ու զիս պիտի մեռ-
ցընեն, բայց քեզ ողջ թողուն․
13 Շնո՛րհք ըրէ՝ ըսէ՛ թէ դուն իմ
քոյրս ես․ որպէս զի քու պատճա-
ռովդ ինծի աղէկ ըլլայ, ու քու
14 պատճառովդ իմ անձս ապրի ։ Եւ
եղաւ որ՝ երբ Աբրամ Եգիպտոս
մտաւ, Եգիպտացիք տեսան կնի-
15 կը, որ շատ գեղեցիկ էր ։ Փա-
րաւոնին իշխաններն ալ տեսան, ու
գովեցին զանիկայ Փարաւոնին առ-
ջևը․ և կնիկը Փարաւոնին տունը
16 առնուեցաւ ։ Եւ անոր համար
Աբրամին սպասիւ ըրաւ․ ու անիկայ
ոչխարներ, ու արջառներ, և էշեր,
ու ծառաներ, և աղախիններ, ու
17 էգ էշեր ու ուղտեր ունեցաւ ։ Եւ
Տէրը մեծ հարուածներով զարկաւ
Փարաւոնը ու անոր տունը՝ Աբրա-
18 մին կնոջը Սարային համար ։ Եւ
Փարաւոն կանչեց Աբրամը, ու ը-
սաւ․ Աս ի՞նչ է որ ինծի ըրիր․
ինչո՞ւ ինծի չյայտնեցիր թէ ասի-
19 կայ քու կնիկդ է․ Ինչո՞ւ համար՝
Ասիկայ քոյրս է՝ ըսիր․ և քիչ մնաց
որ անիկայ ինծի կնիկ պիտի առ-
նէի, բայց հիմա ահա՛ կնիկդ՝ ա՛ռ
20 ու գնա ։ Եւ Փարաւոն իր մար-
դոցը պատուիրեց անոր համար․ ու
զանիկայ իր կնիկովը ու իր բոլոր
ստացուածքովը խրկեցին ։

ԳԼ․ ԺԳ

1 Աբրամ ու Ղովտ Եգիպտոսէն կը դառնան․ 7 հովիւներուն անմիաբանութեանը համար ի-րարմէ կը բաժնուին ։ 10 Ղովտ Սոդոմ կ'եր-թայ ։ 14 Աբրամին եղած խոստմունքին նո-րոգութիւնը ։ 18 Աբրամ Քեբրոն երթալով հոն սեղան կը շինէ ։

1 Եւ Աբրամ իր կնիկովը ու իր բոլոր
ունեցածներովը՝ Եգիպտոսէն
դէպ 'ի Քանանու հարաւակողմը
2 ելաւ, ու Ղովտն ալ իր հետը ։ Եւ
Աբրամ շատ հարուստ էր անասուն-
ներով, արծաթով ու ոսկիով․
3 Եւ իր ուղևորութիւններովը գնաց
հարաւային կողմէն մինչև Բեթէլ,
ան տեղը՝ ուր էր առաջ իր վրանը,
Բեթէլին ու Գայիին մէջտեղը․
4 Ան սեղանին տեղը՝ որ հոն առաջ
ըրեր էր․ և Աբրամ հոն Տէրոջը
անունը կանչեց ։

Ն․ Ք․ ԴՓ․ 1921
Գլ․ ժզ․ 3։
Գլ․ իզ․ 1։
Սաղ․ ճե․ 13։
Գլ․ խգ․ 1։
Հռմ․ 14։ Գլ․ իզ․ 7։
Գլ․ ի․ 11։ իզ․ 7։
Գլ․ ի․ 5։ 13։ Տե՛ս իզ․ 7։
Իբր 1920
Գլ․ լթ․ 7։ Մատ․ ե․ 28։
Գլ․ ի․ 2․
Գլ․ ի․ 14։
Գլ․ ի․ 18։ Մն․ ժզ․ 21։ Սաղ․ ճե․ 14։ Եբր․ ժգ․ 4։
Գլ․ ի․ 9։ իզ․ 10։
Առակ․ իա․ 1։
Իբր 1918
Գլ․ ժբ․ 9․
Գլ․ իդ․ 35։ Սաղ․ ճժբ․ 3։ Առակ․ ժ․ 22։
Գլ․ ժբ․ 8, 9․
Գլ․ ժբ․ 7, 8։
Սաղ․ ճժզ․ 17։

Ն. Ք. ՉՖ. իբր 1918

5 Եւ Աբրամին հետ գացող
Ղովտն ալ ոչխարներ, ու ար-
6 ջառներ, ու վրաններ ունէր։ Եւ
այն երկիրը բաւական չէր անոնց՝
որ մէկտեղ բնակին. ինչու որ
անոնց ստացուածքը շատ ըլլալով՝
չէին կրնար մէկտեղ բնակիլ։
7 Եւ Աբրամին անասուններուն հո-
վիւներուն՝ ու Ղովտին անասուն-
ներուն հովիւներուն մէջտեղը վէճ
կար. և այն ատենը Քանանացի-
ները ու Փերեզացիները կը բնա-
8 կէին այն երկրին մէջ։ Եւ Աբ-
րամ ըսաւ Ղովտին. Կ'աղաչեմ
քեզի, իմ ու քու մէջտեղդ՝ և իմ
հովիւներուս ու քու հովիւներուդ
մէջտեղը վէճ չըլլայ. ինչու որ մենք
9 եղբայր ենք. Բոլոր երկիրը քու
առջեւդ չէ՞. կ'աղաչեմ՝ զատուէ
ինծմէ. Թէ որ դուն ձախ կողմը
երթաս, ես աջ կողմը կ'երթամ,
և թէ որ աջ կողմը երթաս, ես ձախ
10 կողմը կ'երթամ։ Եւ Ղովտ իր
աչքերը վեր վերցուց, ու Յոր-
դանանու ամէն կողմը նայեցաւ՝ որ
ամէն տեղ ջրուած էր, Տէրը Սո-
դոմը ու Գոմորը կործանելէն
առաջ՝ մինչև Սեգովրը Տէրոջը
դրախտին պէս՝ Եգիպտոսի երկրին
11 պէս էր։ Եւ Ղովտ Յորդանա-
նու բոլոր կողմը ընտրեց իրեն,
ու Ղովտ դէպ 'ի արևելք չուեց.
12 և իրարմէ զատուեցան. Աբրամ
Քանանու երկրին մէջ բնակեցաւ.
Ղովտն ալ դաշտի քաղաքներուն
մէջ բնակեցաւ, ու իր վրանը
13 մինչև Սոդոմի քով բացաւ։ Եւ
Սոդոմի մարդիկը խիստ չար ու
մեղաւոր էին Տէրոջը առջեւը։
14 Եւ Տէրը Աբրամին ըսաւ՝ Ղովտը
անկէ զատուելէն ետքը. Հիմա
աչքերդ վեր վերցուր, ու քու եղած
տեղէդ դէպ 'ի հիւսիս ու հարաւ
և դէպ 'ի արևելք ու արեւմուտք
15 նայէ. Ինչու որ ատ բոլոր երկիրը
որ կը տեսնես, քեզի ու քու
սերունդիդ պիտի տամ յաւիտեան։
16 Եւ քու սերունդդ երկրի փոշիին
պէս պիտի ընեմ. այնպէս
որ եթէ մէկը երկրի փոշին կրնայ
համրել, քու սերունդդ ալ
17 համրուի։ Ելի՛ր, ատ երկիրը
պտըտէ անոր երկայնութեանը ու
լայնութեանը համեմատ. քանզի
18 անիկայ քեզի պիտի տամ։ Եւ
Աբրամ վերցուց իր վրանը, ու
եկաւ և բնակեցաւ Մամբրէի
կաղնիներուն մէջ. որ Քեբրոնին
մէջն է և հոն սեղան շինեց
Տէրոջը։

## ԳԼ. ԺԴ

1 Չորս թագաւորներուն՝ հինգ թագաւորներու հետ ըրած պատերազմը. 11 Ղովտ գերի կ'առնուի. 14 ու Աբրամ զանիկայ կ'ազատէ. 18 Մելքիսեդեկ Աբրամը կ'օրհնէ. 20 Աբրամ ալ անոր տասանորդ կու տայ. 22 առած աւարէն իր հետը եղողներուն բաժին տալէն ետքը, մնացածը Սոդոմի թագաւորին ետ կու տայ։

1 Ու եղաւ որ՝ Սենաարի Ամարփաղ
թագաւորին, Ելլասարի Ա-
րիովք թագաւորին, Եղամի Քո-
դողագոմոր թագաւորին. և Գոյի-
մի Թադգաղ թագաւորին ժամա-
2 նակները. Ասոնք Սոդոմի Բարա
թագաւորին հետ. և Գոմորի Բար-
սա թագաւորին հետ, Ադմայի Սե-
նաբ թագաւորին հետ, և Սեբոյի-
մի Սիմոբոր թագաւորին հետ, ու
Բաղայի (այսինքն Սեգովրի) թա-
3 գաւորին հետ պատերազմեցան։ Ա-
սոնց ամէնը ժողվուեցան Սիդդիմ
4 ձորին մէջ, որ է Աղի ծով։ Տաս-
ուերկու տարի Քոդողագոմորին
ծառայութիւն ըրին, ու երեքտա-
սաներորդ տարին ապստամբ եղան։
5 Եւ չորեքտասաներորդ տարին Քո-
դողագոմոր ու իր հետը եղող թա-
գաւորները եկան, ու Աստարովթ
կառնայիմի մէջ եղող Ռափայինե-
րը, ու Համի մէջ Զուզեյինե-
րը, և Շաւէ Կարիաթեմի մէջ
6 Էմիմները, Եւ Քոռեցիները ի-
րենց Սէիր լեռանը վրայ՝ մինչև ա-
նապատին քովը եղող *Էլփառանը
7 զարկին։ Եւ դարձան, ու եկան
†Ենմասեփաթ՝ այսինքն Կադէս. և
Ամաղեկացւոց բոլոր նահանգը, ու
Ասասանթամարի մէջ բնակող
8 Ամօրհացիներն ալ զարկին։ Եւ
Սոդոմին թագաւորը, ու Գոմորին
թագաւորը, և Ադմային թագա-
ւորը, ու Սեբոյիմին թագաւորը, և
Բաղային (այսինքն Սեգովրին) թա-
գաւորը ելլելով, Սիդդիմ ձորին
մէջ անոնց հետ պատերազմելու
9 շարուեցան. Այսինքն Եղամի Քոդո-
ղագոմոր թագաւորին հետ, և
Գոյիմի Թադգաղ թագաւորին հետ,
ու Սենաարի Ամարփաղ թագաւո-
րին հետ, և Ելլասարի Արիովք թա-
գաւորին հետ, այս չորս թագա-
10 ւորը այն հինգին հետ։ Եւ Սիդ-
դիմ ձորը կնաւթի հորերով լեցուն
էր. և Սոդոմին ու Գոմորին թա-
գաւորները փախան, և հոն ինկան.
ու մնացածները լեռը փախան։
11 Եւ անոնք Սոդոմին ու Գոմորին
ամէն բարիքը, ու անոնց բոլոր
12 պաշարները առին ու գացին։ Եւ
Սոդոմի մէջ բնակող Աբրամին եղ-
բօրորդին Ղովտը՝ ու անոր բոլոր
բարիքը առին ու գացին։
13 Եւ փախստական մը եկաւ, ու
այն Եբրայեցի Աբրամին
պատմեց. և անիկայ Եսքողին ու
Աներին եղբօրը Ամօրհացի Մամբրէ-

Ն. Ք. ՉՖ. իբր 1917

Գլ. ժ. 10. ժա. 2.
Եսա. ժա. 11.
բ Օր. իթ. 23.
Գլ. ժթ. 22.
բ Օր. գ. 17. Թուոց լդ. 12. Յեսու. գ. 16. Սաղ. ճէ. 34.
Գլ. թ. 26.
իբր 1913
Յես. ժբ. 4. ժգ. 12.
Գլ. ժե. 20. բ Օր. գ. 11.
բ Օր. բ. 20.
բ Օր. բ. 10. 11.
բ Օր. բ. 12. 22.
Գլ. իա. 21. Թուոց. ժբ. 16. ժգ. 3.
* Եբ. Փառանին բաեկնին.
† Եբ. դատաստանի աղբիւր.
Բ Մն. ի. 2.
Գլ. ժա. 3.
Գլ. ժթ. 17, 30.
Հմր 16, 21.
Գլ. ժգ. 12.
Գլ. ժբ. 5.
Գլ. ժգ. 18.

Ն․ Ք․ ՉՔ․ ԻՐՐ 1913

ՐՀմր 24 ։
ՏԳԼ․ ԺԳ․ 8 ։
ՆԳԼ․ ԺԵ 3 ։ ԺԷ․ 12 ։ 27 ։ Ժող․ Բ․ 7 ․
ՆԲՕր․ ԼԳ․ 1 ։ Դատ․ ԺԸ․ 29 ։
ՈԵս․ ԽԱ․ 2, 3 ։
*Եբր․ ձախ
ՉՀմր 11, 12 ։
ԴԵբր․ Է․ 1 ։
ԶԴատ․ ԺԱ․ 34 ։ Ա Թագ․ ԺԸ․ 6 ։
Բ Թագ․ ԺԸ․ 18 ։
ՄԵբր․ Է․ 1 ։
ԼՄիք․ Զ․ 6 ։ Գոր․ ԺԶ․ 17 ։ Հռութ․ Գ․ 10 ։ Բ Թագ․ Բ․ 5 ։
ՓՍաղ․ ՃԺ․ 4 ։ Եբր․ Է․ 6 ։
ՔՀմր․ 22 ։ Մատ․ ԺԱ․ 25 ։
ԶԳԼ․ ԻԴ․ 27 ։
ՌԵբր․ Է․ 4 ։
ՕՀմր 19 ։ ԳԼ․ ԻԱ․ 33 ։ ՅԵԼ․ Զ․ 8 ։ Դան․ ԺԲ․ 7 ։ Յայտ․ Ժ․ 5, 6 ։
ՖՏե՛ս Եսթ․ Թ․ 15, 16 ։
ՖՀմր 13 ։

ին կաղնիներուն մէջ կը բնակէր․
ինչու որ անոնք Աբրամին հետ
14 դաշնակից էին ։ Եւ Աբրամ երբոր
իր եղբօրը գերի առնուիլը լսեց,
իր տանը մէջ ծնածները՝ երեք հա-
րիւր տասնըութը հոգի սպառա-
զինեց, ու անոնց ետեւէն ինկաւ մին-
15 չեւ Դան ։ Եւ ինքը ու իր ծառաները
գիշերով գունդ գունդ անոնց վրայ
յարձակեցան, ու զարկին անոնք․
եւ քշեցին անոնք մինչեւ Քոբան, որ
Դամասկոսի *հիւսիսային կողմն
16 է ։ Եւ բոլոր բարիքը ետ բերաւ․
եւ իր եղբայրը Ղովտն ալ, ու անոր
բարիքը, եւ կնիկները, ու ժողո-
վուրդն ալ ետ բերաւ ։
17 Եւ ինքը՝ Քոդողագոմորը ու
անոր հետ եղող թագաւորները
զարնելէն ու դառնալէն ետքը, Սո-
դոմի թագաւորը զանիկայ դիմա-
ւորելու ելաւ դէպ 'ի Շաւէ ձորը՝
18 (այսինքն թագաւորի ձորը) ։ Եւ
Սաղէմի թագաւորը Մելքիսեդեկ
հաց ու գինի հանեց․ ու անիկայ
Բարձրեալ Աստուծոյ քահանան
19 էր ։ Եւ օրհնեց զանիկայ, ու ըսաւ․
Օրհնեալ ըլլայ Աբրամ՝ երկնից ու
երկրի տէրը եղող Բարձրեալ Աս-
20 տուծմէն ։ Եւ օրհնեալ ըլլայ
Բարձրեալ Աստուածը՝ որ քու
թշնամիներդ քու ձեռքդ մատնեց ։
Եւ անիկայ ամէնէն տասանորդ
տուաւ անոր ։
21 Եւ Սոդոմի թագաւորը ըսաւ Աբ-
րամին․ Մարդիկը ինծի՛ տուր, ու
22 բարիքը դուն քեզի՛ առ ։ Եւ Աբ-
րամ ըսաւ Սոդոմի թագաւորին․
Երկնից ու երկրի տէրը եղող Բարձ-
րեալ Տէր Աստուծոյ վերցուցի
23 իմ ձեռքս, Որ դերձանէն մինչեւ
կօշիկին կապը բան մը չառնեմ՝
ի՛նչ որ քուկդ է, որ չըլլայ թէ՝
Աբրամը ես հարստացուցի ըսես․
24 Բաց 'ի տղաքներուն կերածէն, ու
ինծի հետ եկող մարդոցը՝ այսինքն
Աներին, ու Եսքողին, ու Մամբ-
րէին բաժիններէն․ թող անոնք
իրենց բաժինը առնեն ։

## ԳԼ․ ԺԵ

1 Աստուած Աբրամը կը քաջալերէ ։ 2 Աբրամ անորդի ըլլալուն համար կը գանգատի ։ 4 Աստուած կը խոստանայ Աբրամին զաւակ մը տալ, ու անոր սերունդը շատցընել ։ 6 Աբրամ հաւատքով կ'արդարանայ ։ 7 Քանանու երկիրը նորէն անոր կը խոստացուի նշանով մը, 12 և տեսիլքով մը ։

ԱԴան․ Ժ․ 1 ։ Գոր․ Ժ․ 10, 11 ։
ԲԳԼ․ ԻԶ․ 24 ։ Դան․ Ժ․ 12 ։ Ղու․ Ա․ 13, 30 ։
ԳՍաղ․ Գ․ 3 ։ Ե․ 12 ։ ԺԴ․ 11 ։ ՂԱ․ 4 ։ ՃԺԹ․ 114 ։
ԴՍաղ․ ԺԶ․ 5 ։ ԺԲ․ 11 ։ Առակ․ ԺԱ․ 18 ։
ԵԳոր․ Է․ 5 ։

1 Այս բաներէն ետքը՝ տեսիլքի մէջ
Տէրոջը խօսքը Աբրամին եղաւ,
ըսելով․ Մի՛ վախնար ո՛վ Աբրամ,
ես քեզի պաշտպան եմ, ու քու
վարձքդ խիստ շատ պիտի ըլլայ ։
2 Եւ Աբրամ ըսաւ․ Ո՛վ Տէր Եհո-
վայ՝ ինծի ի՞նչ պիտի տաս, եքա-
նի որ առանց զաւակի կը մնամ,
եւ իմ տանս տիրողը աս Դամաս-
3 կացի Եղիազարն է ։ Նաեւ ըսաւ
Աբրամ․ Որովհետեւ ինծի սերունդ
չտուիր, ահա՛ իմ տանս ծա-
4 ռան ինծի ժառանգ կ'ըլլայ ։ Եւ
ահա՛ Տէրոջը խօսքը անոր եղաւ՝
ըսելով․ Անիկայ քեզի ժառանգ
պիտի չըլլայ․ բայց ան պիտի ըլլայ
քու ժառանգդ՝ որ քու մէջքէդ
5 պիտի ելլէ ։ Եւ դուրս հանեց
զանիկայ, ու ըսաւ․ Հիմա դէպ
'ի երկինքը նայէ, ու աստղերը
համրէ՛, թէ որ զանոնք համրե-
լու կարող ես․ եւ ըսաւ անոր․
Քու սերունդդ ասանկ պիտի ըլ-
6 լայ ։ Եւ անիկայ հաւատաց Տէ-
րոջը, որ անոր արդարութիւն ըլ-
լալ սեպեց ։
7 Եւ ըսաւ անոր․ Ես եմ Տէրը՝
որ քեզ Քաղդէացւոց Ուր քաղա-
քէն հանեցի՝ աս երկիրը քեզի
ժառանգութիւն տալու համար ։
8 Եւ անիկայ ըսաւ․ Ո՛վ Տէր Ե-
հովայ՝ ի՞նչպէս գիտնամ թէ ես
9 անիկայ պիտի ժառանգեմ ։ Եւ
ըսաւ անոր․ Ինծի երեք տարեկան
երինջ մը, ու երեք տարեկան այծ
մը, եւ երեք տարեկան խոյ մը, ու
տատրակ մը, եւ աղաւնիի ձագ մը
10 առ ։ Եւ անիկայ բոլոր ասոնք ի-
րեն առաւ, ու զասոնց մէջտեղէն
կտրեց, եւ ամէն մէկ կտորը իր
մասին հետ դիմացէ դիմաց դրաւ․
11 բայց թռչունները չկտրեց ։ Ու
երբոր դիերուն վրայ գիշատիչ
թռչունները իջան, Աբրամ վռըն-
12 տեց զանոնք ։ Ու երբոր արեւը
մարը կը մտնէր, Աբրամին վրայ
խորունկ քուն մը իջաւ․ եւ ահա՛
անոր վրայ մեծ մթութեան սոս-
13 կում մը ինկաւ ։ Եւ Տէրը ըսաւ
Աբրամին․ Ստո՛յգ գիտցիր որ քու
սերունդդ իրենցը չեղած երկրի մէջ
պանդուխտ պիտի ըլլան, եւ ծա-
ռայութիւն պիտի ընեն․ ու հոն
չորս հարիւր տարի պիտի չարչա-
14 րեն զանոնք ։ Բայց ան ազգը՝
որուն պիտի ծառայեն, ես պիտի
դատեմ․ եւ անկէ ետքը շատ ստա-
15 ցուածքով պիտի ելլեն ։ Եւ դուն
խաղաղութեամբ քու հայրերուդ
պիտի երթաս․ աղէկ մը ծերացած
16 պիտի թաղուիս ։ Եւ զանոնք չոր-
րորդ դարուն մէջ հոս պիտի դառ-
նան․ ինչու որ Ամորհացւոց անօ-
րէնութիւնը դեռ լեցուած չէ ։
17 Եւ եղաւ որ երբ արեւը մարը մտաւ,
ու խաւար եղաւ, ահա՛ մխած փող
մը, ու վառած ջահ մը նոյն կը-
տորներուն մէջտեղէն անցաւ ։
18 Ան նոյն օրը Տէրը Աբրամին
հետ ուխտ մը ըրաւ՝ ըսելով․

Ն․ Ք․ ՉՔ․ ԻՐՐ 1913

ԶԳԼ․ ԺԴ․ 14 ։
ԷԵբր․ որդին
ԸԲ Թագ․ Է․ 12 ։ ԺԶ․ 11 ։ Բ Մն․ ԼԲ․ 21 ։
ԹԵրեմ․ ԼԴ․ 22 ։
ԺՍաղ․ ՃԽԷ․ 4 ։
ԺԳԼ․ ԻԲ․ 17 ։ ԵԼ․ ԼԲ․ 13 ։ ԲՕր․ Ա․ 10 ։ Ժ․ 22 ։ Ա Մն․ ԻԷ․ 23 ։ Հռով․ Դ․ 18 ։ Եբր․ ԺԱ․ 12 ։ Տե՛ս ԳԼ․ ԺԳ․ 16 ։
ԻՀռով․ Դ․ 3, 9, 22 ։ Գաղ․ Գ․ 6 ։ Յակ․ Բ․ 23 ։
ԼՍաղ․ ՃԶ․ 31 ։
ԽԳԼ․ ԺԱ․ 28, 31 ։
ԾԳԼ․ ԺԲ․ 1 ։
ԿՍաղ․ ՃԶ․ 42, 44 ։ Հռով․ Դ․ 13 ։
ՀՏե՛ս ԳԼ․ ԻԴ․ 13, 14 ։ Դատ․ Զ․ 17, 37 ։ Ա Թագ․ ԺԴ․ 9, 10 ։ Դ Թագ․ Ի․ 8 ։ Ղու․ Ա․ 18 ։
ՁԵրեմ․ ԼԴ․ 18, 19 ։
ՂԳԼ․ Ա․ 17 ։
ՃԾն․ Բ․ 21 ։
Յոբ․ Դ․ 13 ։
ՄԵԼ․ ԺԲ․ 40 ։ Սաղ․ ՃԵ․ 23 ։ Գործ․ Է․ 6 ։
ՅԵԼ․ Ա․ 11 ։ Սաղ․ ՃԵ․ 25 ։
ՆԵԼ․ Զ․ 6 ։ ԲՕր․ Զ․ 22 ։
ՇԵԼ․ ԺԲ․ 36 ։ Սաղ․ ՃԵ․ 37 ։
ՈՅոբ․ Ե․ 26 ։
ՉԳոր․ ԺԳ․ 36 ։
ՊԳԼ․ ԻԵ․ 8 ։
ՋԵԼ․ ԺԲ․ 40 ։
ՌԳ Թագ․ ԻԱ․ 26 ։
ՍԴան․ Ը․ 23 ։ Մատ․ ԻԳ․ 32 ։ Ա Թես․ Բ․ 16 ։
ՎԵրեմ․ ԼԴ․ 18, 19 ։
ՏԳԼ․ ԻԴ․ 7 ։

քու սերունդիդ տուի աս երկիրը՝
Եգիպտոսի գետէն մինչև մեծ գետը՝
19 այսինքն Եփրատ գետը. Կենեցի-
ները, և Կենեզացիները, ու Կեդ-
20 մոնացիները, Եւ Քետացիները,
ու Փերեզացիները, և Ռափային-
21 ները, Եւ Ամօրհացիները, ու
Քանանացիները, և Գերգեսացի-
ները ու Յեբուսացիները։

## ԳԼ. ԺԶ

1 Սարայ իր ամլութեանը համար՝ Հագարը Աբրամին կու տայ։ 6 Հագար իր տիկինը արհամարհելուն համար նեղութիւն կը կրէ ու կը փախչի։ 7 Հրեշտակ մը զանիկայ ետ կը խրկէ, 11 անոր զաւակ ծնանելուն աւետիսը տալով։ 15 Իսմայէլի ծնունդը։

1 Եւ Աբրամին կնիկը Սարայ չէր
ծնաներ անոր. ու մէկ Եգիպ-
տացի աղախին մը ունէր, որուն
2 անունը Հագար էր։ Եւ Սարայ
ըսաւ Աբրամին. Ահա՛ հիմա Տէրը
արգիլեց զիս ծնանելէն. Ուրեմն
աղախինի՛ս մտիր, գուցէ անկէ զա-
ւակ ստանամ։ Եւ Աբրամ Սա-
3 րային խօսքը մտիկ ըրաւ։ Եւ
Աբրամին կնիկը Սարայ՝ իր Եգիպ-
տացի աղախինը Հագարը առաւ,
Աբրամ Քանանու երկրին մէջ տա-
սը տարի բնակելէն ետքը, և զա-
նիկայ իր էրկանը Աբրամին տուաւ
4 անոր կնիկ ըլլալու։ Ան ալ մտաւ
Հագարին, որ յղացաւ. և երբ իր
յղի ըլլալը իմացաւ, իր տիկինը իր
5 աչքին առջևը անարգուեցաւ։ Եւ
Սարայ ըսաւ Աբրամին. Ինծի եղած
անիրաւութիւնը քու վրադ ըլլայ.
ես իմ աղախինս գիրկդ տուի, ու
անիկայ երբոր իմացաւ իր յղի ըլ-
լալը, ես անոր աչքին առջևը ա-
նարգուեցայ. Տէրը իմ ու քու մէջ-
6 տեղդ դատաստան ընէ։ Եւ Աբ-
րամ ըսաւ Սարային. Ահա՛ աղա-
խինդ քու ձեռքդ է, քու աչքերուդ
հաճոյ երևցածին պէս ըրէ՛ անոր.
ու երբոր Սարայ նեղեց զանիկայ,
անոր երեսէն փախաւ Հագարը։
7 Եւ Տէրոջը հրեշտակը գտաւ զա-
նիկայ անապատին մէջ ջուրի աղ-
բիւրի մը քով՝ Սուրի ճանապար-
8 հին մէջ եղած աղբիւրին քովը։ Եւ
ըսաւ. Ո՛վ Սարային աղախինը
Հագար, ո՞ւսկից կու գաս, և
ո՞ւր կ'երթաս։ Եւ անիկայ ըսաւ.
Իմ Սարայ տիկնոջս երեսէն կը
9 փախչիմ։ Եւ Տէրոջը հրեշտակը
ըսաւ անոր. Դարձի՛ր քու տիկ-
նոջդ, ու անոր ձեռքին տակը հնա-
10 զա՛նդ եղիր։ Եւ Տէրոջը հրեշ-
տակը ըսաւ անոր. Քու սերունդդ
խիստ պիտի շատցընեմ, անանկ որ
11 շատութենէն չհամրուի։ Եւ Տէ-
րոջը հրեշտակը ըսաւ անոր. Ահա
դուն յղի ես, ու որդի պիտի ծնա-
նիս. ու անոր անունը * Իսմայէլ դը-
նես. ինչու որ Տէրը քու տառապան-
12 քըդ լսեց. Եւ անիկայ վայրենի մարդ
մը պիտի ըլլայ. անոր ձեռքը ա-
մենուն վրայ, ու ամենուն ձեռքն
ալ անոր վրայ պիտի ըլլայ. և
անիկայ իր բոլոր եղբայրներուն առ-
13 ջևը պիտի բնակի։ Եւ անիկայ
իր հետը խօսող Տէրոջը անունը
կանչեց, ըսելով. Դուն իմ տեսիլքիս
մէջ երևցած Աստուածն ես. քանզի
ըսաւ. Արդեօք † ո՞չ եմ" հոս՝ իմ
14 տեսիլքէս ետքը։ Անոր համար ան
ջրհորին անունը ‡ Լահայրօյի ջըր-
հոր" դրաւ. Ահա՛ անիկայ Կադէսին
15 ու Բարադին մէջտեղն է։ Եւ Հա-
գար որդի մը ծնաւ Աբրամին.
և Աբրամ Հագարին իրեն ծնած
որդւոյն անունը՝ Իսմայէլ դրաւ։
16 Եւ Աբրամ ութսունվեց տարե-
կան էր, երբոր Հագար Իսմայէլը
ծնաւ Աբրամին։

## ԳԼ. ԺԷ

1 Աստուած իր ուխտը կը նորոգէ, 5 և Աբրամին անունը Աբրահամ կը դնէ։ 10 Թլփատութեան պատուէրը։ 15 Սարայ՝ Սարրա կ'անուանի, և օրհնութիւն կ'առնէ։ 17 Իսահակը կը խոստացուի։ 23 Աբրահամին և Իսմայէլին թլփատուիլը։

1 Եւ երբ Աբրամ իննսունինը
տարեկան էր, Տէրը Աբրամին
երևցաւ, ու ըսաւ անոր. Ես եմ
Ամենակարող Աստուածը. իմ առ-
ջևս քալէ՛, ու կատարեա՛լ եղիր։
2 Եւ իմ ու քու մէջտեղդ իմ ուխտս
պիտի դնեմ, ու խիստ պիտի
3 շատցընեմ քեզ։ Եւ Աբրամ իր
երեսին վրայ ինկաւ, ու Աստուած
4 անոր հետ խօսեցաւ՝ ըսելով. Ահա՛
իմ ուխտս քեզի հետ է, և ազգե-
րու բազմութեան հայր պիտի ըլլաս.
5 Ու այսուհետև քու անունդ ‖ Աբ-
րամ չըսուի, հապա քու անունդ
§ Աբրահամ ըլլայ. ինչու որ քեզ
ազգերու բազմութեան հայր ըրի։
6 Եւ քեզ խիստ պիտի աճեցընեմ,
ու քեզ ազգեր պիտի ընեմ. ու
քեզմէ թագաւորներ պիտի ելլեն։
7 Եւ իմ ու քու մէջտեղդ՝ ու քեզմէ
ետքը քու սերունդիդ մէջտեղը
իրենց ազգերուն մէջ՝ իմ ուխտս
պիտի հաստատեմ՝ յաւիտենական
ուխտ մը, որ քեզի՝ ու քեզմէ
ետքը քու սերունդիդ Աստուած
8 ըլլամ։ Եւ պիտի տամ քեզի՝ ու
քեզմէ ետքը քու սերունդիդ յաւի-
տենական ժառանգութեան համար
ան երկիրը՝ ուր որ պանդուխտ
եղար, բոլոր Քանանու երկիրը.
ու անոնց Աստուած պիտի ըլլամ։
9 Եւ Աստուած ըսաւ Աբրահամին.
Ուստի դուն՝ ու քեզմէ ետքը քու
սերունդդ իրենց ազգերուն մէջ՝
10 պահէք իմ ուխտս։ Աս է իմ ու-

1913

1911

1910

1898

Ն. Ք. ԳՔ.
1898
Հ Գոր. է. 8
Հ Գոր. է. 8 ։ Հռով. դ. 11 ։
Ղև. ժբ. 3 ։ Ղուկ. բ. 21 ։ Յօհ. է. 22 ։ Փիլ. գ. 5 ։
Ելք. դ. 24 ։
* Եբր. կըտրուի.
† Յ' իշխանուհի ։
Գլ. ժը. 10 ։
Գլ. լե. 11 ։ Գաղ. դ. 31 ։ Պետ. գ. 6 ։
Գլ. ժը. 12 ։ Իա. 6 ։
Գլ. ժը. 10 ։ Իա. 2 ։ Գաղ. դ. 28 ։
‡ Յ' խնդութիւն ։
Գլ. ժզ. 10 ։
Գլ. իե. 12, 16 ։
Գլ. իա. 18 ։
Գլ. իա. 2 ։

ձեր մէջտեղը, ու քեզմէ ետքը քու
սերունդիդ մէջտեղը եղած իմ
ուխտս՝ որ պիտի պահէք. Ձեզմէ
11 ամէն արուն թլփատուի. Ձեր
անթլփատութեան մարմինը թլփա-
տէք, ու ասիկայ իմ ու ձեր մէջ-
տեղը եղած ուխտին նշանը ըլլայ ։
12 Եւ ձեր ազգերուն մէջ ամէն ութ-
օրուան արու զաւակնիդ՝ կամ տու-
նը ծնածը, կամ քու սերունդէդ
չեղող բոլոր օտարականներէն ըս-
տակով ծախու առնուածը՝ թըլ-
13 փատուի ։ Քու տունդ ծնածը՝ և
ստակովդ ծախու առնուածը ան-
շուշտ պիտի թլփատուի. և իմ
ուխտս ձեր մարմիններին մէջ յաւի-
14 տենական ուխտ մը ըլլայ ։ Եւ ան-
թլփատ արուն՝ որուն անթլփա-
տութեան մարմինը թլփատուած
չէ, այն անձը իր ժողովուրդէն
պիտի *կորսուի. ասիկայ իմ ուխ-
տըս անարգած է ։
15 Եւ Աստուած ըսաւ Աբրահամին.
Քու կնոջդ Սարային անունը՝ Սարայ
մի՛ կանչեր, հապա անոր անունը
16 †Սարրա ըլլայ ։ Ու զանիկայ պիտի
օրհնեմ, նաև անկէ որդի մը պիտի
տամ քեզի. ու պիտի օրհնեմ
զանիկայ, ու ազգերու մայր պիտի
ըլլայ. ժողովուրդներու թագա-
17 ւորներ պիտի ելլեն անկէ ։ Եւ Աբ-
րահամ երեսի վրայ ինկաւ, ու
խնդաց, ու իր սրտին մէջ ըսաւ.
Հարիւր տարեկան մարդուն զաւակ
պիտի ըլլա՞յ արդեօք. և Սարրա՝
որ իննսուն տարեկան է, պիտի
18 ծնանի՞ ։ Ու Աբրահամ ըսաւ
Աստուծոյ. Թո՛ղ Իսմայէլը ապրի
19 քու առջևդ ։ Եւ Աստուած ըսաւ.
Այո՛ քու կինկդ Սարրան որդի
պիտի ծնանի քեզի, ու անոր
անունը՝ ‡Իսահակ պիտի դնես.
և անոր հետ, ու անկէ ետքը անոր
սերունդին հետ իմ ուխտս պիտի
հաստատեմ յաւիտենական ուխտ
20 մը ։ Եւ Իսմայէլին համար ալ լը-
սեցի քեզի. ահա օրհնեցի զանի-
կայ, ու պիտի աճեցընեմ զանի-
կայ, ու խիստ պիտի շատցընեմ.
անիկայ տասներկու իշխան պիտի
ծնանի, և մեծ ազգ մը պիտի
21 ընեմ անիկայ ։ Բայց գալ տարի
աս ատենս՝ Սարրային քեզի ծը-
նանելու Իսահակին հետ իմ ուխտս
պիտի հաստատեմ ։
22 Եւ անոր հետ խօսիլը լմնցուց,
ու Աստուած Աբրահամին քովէն
23 վեր ելաւ ։ Եւ առաւ Աբրահամ
իր որդին Իսմայէլը, ու բոլոր իր
տունը ծնածները, և բոլոր ըս-
տակով ծախու առնուածները՝ Աբ-
րահամին ընտանեացը մէջ գըտ-
նուած ամէն արուն, ու նոյն օրը

Ն. Ք. ԳՔ.
1898
1898
Գլ. ժը. 19 ։

անոնց անթլփատութեան մարմինը
թլփատեց, ինչպէս որ Աստուած
24 անոր ըսեր էր ։ Եւ Աբրահամ
իննսունինը տարեկան էր՝ երբ որ
իր անթլփատութեան մարմինը
25 թլփատուեցաւ ։ Եւ իր որդին
Իսմայէլը տասուերեք տարեկան էր՝
երբոր իր անթլփատութեան մար-
26 մինը թլփատուեցաւ ։ Նոյն օրը
թլփատուեցաւ Աբրահամ, ու իր
27 որդին Իսմայէլը ։ Եւ իր տանը
բոլոր մարդիկը՝ թէ՛ իր տունը ծը-
նած և թէ օտարականներէն ստա-
կով ծախու առնուած՝ իրեն հետ
թլփատուեցան ։

## ԳԼ. ԺԸ

1 Աբրահամ երեք հրեշտակները կ'ընդունի ։
9 Սարրա խնդալուն համար կը յանդիմանուի ։
17 Սոդոմի կործանումը Աբրահամին կը յայտ-
նուի ։ 23 Աբրահամ բարեխօսութիւն կ'ընէ
Սոդոմացւոց համար ։

1898
Գլ. ժգ. 18 ։ ժդ. 13 ։
Եբր. ժգ. 2 ։
Գլ. ժթ. 1 ։ Պետ. դ. 9 ։
Գլ. ժթ. 2 ։ Իգ. 24 ։
Դատ. զ. 18 ։ ժգ. 15 ։
Դատ. ժթ. 5 ։ Սաղ. ճդ. 15 ։
Գլ. ժթ. 8 ։ Լէ. 10 ։
Գլ. ժթ. 3 ։
Գլ. իդ. 67 ։
Դ Թագ. դ. 16 ։
Եբր. Կենաց ժամանակին
Հռոմ. 14 ։
Գլ. ժէ. 19, 21 ։ Իա. 2 ։ Հռով. թ. 9 ։

1 Եւ Տէրը երևցաւ անոր Մամբ-
րէի կաղնիներուն մէջը ։ Ու
անիկայ օրուան տաք ատենը վը-
2 րանին դուռը նստեր էր, Եւ իր
աչքերը վերցուց ու նայեցաւ, և
ահա՛ երեք մարդիկ կայներ էին
իրեն մօտ. Ու երբոր տեսաւ զա-
նոնք՝ վրանին դռնէն վազեց զանոնք
դիմաւորելու, ու մինչև գետինը
ծռելով խոնարհութիւն ըրաւ,
3 Եւ ըսաւ. Տէ՛ր իմ՝ հիմա թէ որ
շնորհք գտայ քու առջևդ, կ'աղա-
չեմ քեզի՝ քու ծառայէդ ընա-
4 կարանէն մի՛ անցնիր. Կ'աղաչեմ
ձեզի՝ քիչ մը ջուր բերուի, ու ոտ-
քերնիդ լուացէ՛ք, ու ծառին տակը
5 հանգստացէ՛ք. Եւ պատառ մը
հաց բերեմ, ու սրտերնիդ զօ-
րացուցէ՛ք, ե՛տքը անցէ՛ք. Քանզի
ասոր համար ձեր ծառային քովը
եկաք ։ Եւ անոնք ըսին. Ինչպէս
6 որ ըսիր, անանկ ըրէ ։ Եւ Աբրա-
համ արտորալով դէպ 'ի վրանը՝
Սարրային գնաց, ու ըսաւ. Շու-
տով երեք գրիւ բարակ ալի՛ւր շա-
7 ղէ, ու շօթե՛ր շինէ ։ Եւ Աբրահամ
վազեց արջառներուն, ու մատղաշ
և աղէկ որթ մը առաւ, ու պա-
տանիի մը տուաւ. ան ալ շու-
8 տով պատրաստեց զանիկայ ։ Եւ
եկողի՝ ու կաթ՝ ու իր պատրաս-
տած որթը առաւ, և անոնց
առջևը դրաւ. ու ինքը ծառին
տակը անոնց քովը կայնեցաւ, ու
9 անոնք կերան ։ Եւ ըսին իրեն.
Ո՞ւր է քու Սարրա կինկդ. ու
ինքը ըսաւ. ահա՛ վրանին մէջն
10 է ։ Եւ Տէրը ըսաւ. ‖Գալ տարի
անշուշտ քեզի պիտի դառնամ.
և ահա՛ քու կինկդ Սարրա որդի
մը պիտի ունենայ. և Սարրա

Ն․ Ք․ ԴՖ․
1898

ա Գլ․ ԺԵ․ 17 ։ Հռով․ Դ․ 19 ։ Եբր․ ԺԱ․ 11․ 12․ 19 ․
բ Գլ․ ԼԱ․ 35 ։
գ Գլ․ ԺԷ․ 17 ։
դ Ղու․ Ա․ 18 ։
ե Ա Պետ․ Գ․ 6 ։
զ Երեմ․ ԼԲ․ 17 ։ Զաք․ Ը․ 6 ։ Մատ․ Գ․ 9 ։ ԺԹ․ 26 ։ Ղու․ Ա․ 37 ։
է Գլ․ ԺԷ․ 21 ։ Հմր 10 ։ Դ Թագ․ Դ․ 16 ։
* Եբր․ կենաց ժամանակին
ը Հռով․ ԺԹ․ 24 ։ Գ Յով․ 6 ։
թ Սաղ․ ԻԵ․ 14 ։ Ամով․ Գ․ 7 ։ Յով․ ԺԵ․ 15 ։
ժ Գլ․ ԺԲ․ 3 ։ ԻԲ․ 18 ։ Գործ․ Գ․ 25 ։ Գաղ․ Գ․ 8 ։
ի Բ Օր․ Դ․ 9․ 10 ։ Զ․ 7 ։ Յես․ ԻԴ․ 15 ։ Եփե․ Զ․ 4 ։
լ Գլ․ Դ․ 10 ։ ԺԸ․ 13 ։ Յակ․ Ե․ 4 ։
խ Գլ․ ԺԱ․ 5 ։ Ել․ Գ․ 8 ։
ծ Բ Օր․ Ը․ 2 ։ ԺԳ․ 3 ։ Յես․ ԻԲ․ 22 ։ Ղու․ ԺԶ․ 15 ։ Բ Կոր․ ԺԱ․ 11 ։
կ Գլ․ ԺԹ․ 1 ։
հ Հմր 1 ։
ձ Եբր․ Ժ․ 22 ։
ղ Թուո․ ԺԶ․ 22 ։ Բ Թագ․ ԻԴ․ 17 ։
ճ Երեմ․ Ե․ 1 ։
մ Յոբ․ Ը․ 20 ։ Ես․ Գ․ 10․ 11 ։
յ Յոբ․ Ը․ 3 ։ ԼԴ․ 17 ։ Սաղ․ ԾԸ․ 11 ։ ՂԴ․ 2 ։ Հռով․ Գ․ 6 ։
ն Երեմ․ Ե․ 1 ։ Եզեկ․ ԻԲ․ 30 ։

մտիկ կ՚ընէր վրանին դրանը մէջ՝
11 որ անոր ետևն էր ։ Եւ Աբրահամ
ու Սառրա ծերացած էին ու օրեր-
նին անցուցած ․ և Սառրայէն
պակսած էր կանանց օրէնքին մէջ
12 ըլլալը ։ Եւ Սառրա իր մտքին
մէջ խնդաց՝ ըսելով ․ Ես պառաւե-
լէս ետքը զուարճութի՞ւն պիտի
ունենամ, տէրս ալ ծերացած ըլ-
13 լալով ։ Եւ Տէրը ըսաւ Աբրա-
համին ․ Սառրան ինչո՞ւ խնդաց,
ըսելով ․ Միթէ ես իրաւցընէ
պիտի ծնանի՞մ, որ պառաւեր եմ ․
14 Տէրոջը առջևը դժուարին բան մը
կա՞յ արդեօք ․ սահմանուած ժա-
մանակին՝ *գալ տարի'' քեզի պիտի
դառնամ, ու Սառրան որդի մը
15 պիտի ունենայ ։ Եւ Սառրան ու-
րացաւ ու ըսաւ ․ Չխնդացի ․ ին-
չու որ վախցաւ ։ Եւ անիկայ ը-
սաւ ․ Չէ՛, խնդացիր ․
16 Եւ մարդիկը ելան անկէ, ու
երեսնին դէպ ՚ի Սոդոմ շիտկեցին ․
և Աբրահամ զանոնք յուղարկելու
17 համար հետերնին գնաց ։ Եւ Տէ-
րը ըսաւ ․ Միթէ Աբրահամէն
18 պահե՞մ ինչ որ ընելու եմ ․ Որով-
հետև Աբրահամ անշուշտ մեծ ու
զօրաւոր ազգ մը պիտի ըլլայ ․ ու
երկրի բոլոր ազգերը անով պիտի
19 օրհնուին ։ Քանզի գիտեմ զանի-
կայ, որ իր որդւոցը՝ ու իրմէ ետ-
քը իր տանը պիտի պատուիրէ, և
անոնք արդարութիւն ու իրաւունք
ընելու համար՝ Տէրոջը ճամբան
պիտի պահեն ․ որպէս զի Տէրը
Աբրահամին վրայ բերէ ինչ որ
20 խօսեցաւ ։ Եւ Տէրը ըսաւ ․ Ո-
րովհետև Սոդոմին ու Գոմորին ա-
ղաղակը շատցաւ, և անոնց մեղքը
21 խիստ ծանրացաւ, Հիմա պիտի
իջնեմ տեսնելու՝ թէ բոլորովին
ինծի եկած աղաղակի՞ն պէս ըրին ․
22 և թէ որ չէ, գիտնամ ։ Եւ ան
մարդիկը անկէ ելան, ու դէպ ՚ի
Սոդոմ գացին ․ և Աբրահամ տա-
կաւին Տէրոջը առջևը կայներ էր ։
23 Եւ Աբրահամ մօտեցաւ, ու ը-
սաւ ․ Արդեօք ամբարշտին հետ
արդա՞րն ալ պիտի կորսնցընես ․
24 Գուցէ ան քաղաքին մէջը յիսուն
արդար ըլլան ․ արդեօք անոր մէջը
եղած յիսուն արդարին համար
չխնայելով պիտի կորսնցընե՞ս ան
25 տեղը ․ Քա՛ւ լիցի քեզ ասանկ բան
ընելը՝ որ արդարը ամբարշտին հետ
մեռցընես, ու արդարը ամբարշտի
պէս ըլլայ ․ քա՛ւ լիցի քեզ ․ միթէ
բոլոր երկրին Դատաւորը արդա-
26 րութիւն պիտի չընէ՞ ։ Եւ Տէրը
ըսաւ ․ Թէ որ Սոդոմին մէջ յի-
սուն արդար գտնեմ քաղաքին մէ-
ջը, անոնց համար բոլոր տեղը պի-
27 տի խնայեմ ։ Եւ Աբրահամ պա-
տասխան տուաւ ու ըսաւ ․ Ահա՛
հիմա՝ ես որ հող ու մոխիր եմ,
Տէրոջը հետ խօսելու սկսեցի ․
28 Գուցէ յիսուն արդարէն հինգ պա-
կաս ըլլայ, ան հինգին համար բոլոր
քաղաքը պիտի կորսնցընե՞ս ։ Եւ
Անիկայ ըսաւ՝ Թէ որ հոն քառսուն-
ուհինգ գտնեմ, չեմ կորսնցըն-
29 ներ ։ Եւ դարձեալ խօսեցաւ անոր՝
ու ըսաւ ․ Գուցէ հոն քառսուն
գտնուի ։ Եւ Անիկայ ըսաւ ․ Քառ-
30 սունին համար ալ չեմ ըներ ։ Եւ
նորէն ըսաւ ․ Ո՛հ, Տէրը չբարկա-
նայ, ու խօսիմ ․ գուցէ հոն եր-
սուն գտնուի ։ Եւ Տէրը ըսաւ ․
Թէ որ հոն երսուն գտնեմ, չեմ
31 ըներ ։ Եւ նորէն ըսաւ ․ Ահա հի-
մա Տէրոջը հետ խօսելու սկսեցի ․
գուցէ հոն քսան գտնուի ։ Եւ
Անիկայ ըսաւ ․ Քսանին համար ալ
32 չեմ կորսնցըներ ։ Եւ նորէն ըսաւ ․
Ո՛հ, Տէրը չբարկանայ, ու միայն
աս անգամ խօսիմ ․ գուցէ հոն
տասը գտնուի ։ Եւ Անիկայ ը-
սաւ ․ Տասնին համար ալ չեմ կոր-
33 սնցըներ ։ Եւ Տէրը Աբրահամին
հետ խօսիլը լմնցուցածին պէս
գնաց ․ Աբրահամ ալ իր տեղը
դարձաւ ։

## ԳԼ․ ԺԹ

1 Ղովտ երկու հրեշտակները կ՚ընդունի ։ 4 Զար Սոդոմացիք կուրութեամբ կը զարնուին ։ 12 Ղովտ լեռը կը խրկուի ․ 18 Սեգովր երթալու հրաման կ՚առնէ ։ 24 Սոդոմի ու Գոմորի կործանումը ։ 26 Ղովտին կնիկը աղի արձան կ՚ըլլայ ․ 30 Ղովտ այրի մը մէջ կը բնակի ։ 31 Մովաբին ու Ամմոնին ապօրինաւոր ծնունդը ։

1 Եւ ան երկու հրեշտակները իրի-
կուան դէմ Սոդոմ եկան ․ ու
Ղովտ Սոդոմին դուռը նստեր էր ․
և Ղովտ տեսնելով՝ զանոնք դիմա-
ւորելու ելաւ, ու իր երեսը մինչև
գետինը ծռելով խոնարհութիւն ը-
2 րաւ ․ Ու ըսաւ ․ Ա՛ղէ իմ տէրերս
կ՚աղաչեմ, ձեր ծառային տո՛ւնը
դարձէք, և գիշերը հոն կեցէք,
ու ոտքերնիդ լուացէ՛ք ․ ու առ-
տուանց կանուխ ելէ՛ք ու ձեր ճամ-
բա՛ն գացէք ։ Եւ անոնք ըսին ․
Չէ՛, գիշերը փողոցը կը կենանք ։
3 Եւ շատ բռնադատեց զանոնք, ու
անոր դարձան, և անոր տունը մը-
տան ․ ու անոնց խնճոյք ըրաւ,
և բաղարջ եփեց, ու կերան ։
4 Բայց անոնց պառկելէն առաջ՝
քաղաքին մարդիկը՝ այսինքն Սոդո-
մացիք՝ երիտասարդներէն մինչև ծե-
րերը՝ առհասարակ բոլոր ժողո-
5 վուրդը տունը պատեցին ․ Եւ
Ղովտը կանչեցին ու անոր ըսին ․
Ո՞ւր են ան մարդիկը՝ որ աս գիշեր
քեզի եկան ․ զանոնք դո՛ւրս հանէ

Ն․ Ք․ ԴՖ․
1898

ս Գլ․ Գ․ 19 ։ Յոբ․ Դ․ 19 ։ Ժող․ ԺԲ․ 7 ։ Ա Կոր․ ԺԵ․ 47․ 48 ։ Բ Կոր․ Ե․ 1 ։
տ Ղու․ ԺԸ․ 1 ։
ու Դատ․ Զ․ 39 ։
փ Յակ․ Ե․ 16 ։

ք Գլ․ ԺԸ․ 22 ։
օ Գլ․ ԺԸ․ 1, Ա ։
ֆ Եբր․ ԺԳ․ 2 ։
ա Գլ․ ԺԸ․ 4 ։
բ Տե՛ս Ղու․ ԻԴ․ 28 ։
գ Գլ․ ԺԸ․ 8 ։
դ Եզ․ Գ․ 9 ։
ե Դատ․ ԺԹ․ 22 ։

Ն. Ք. ԶՔ.
1898

Ղ Գղ. Գ. 1 ; Հռով. Ա. 24, 27 ; Յուդ. 7 ;
Ծ Դատ. ԺԹ. 23 ;
Է Տե՛ս Դատ. ԺԹ. 24 ;
Ղ Տե՛ս Գղ. ԺԲ. 5 ;
Է Բ Պետ. Բ. 7, 8 ;
Ծ Ել. Բ. 14 ;
Կ Տե՛ս Դ Թագ. Զ. 18 ; Գործ. ԺԳ. 11 ;
Հ Գղ. Է. 1 ; Բ Պետ. Բ. 7, 9 ;
Յ Գղ. ԺԸ. 20 ;
Ղ Ա Մն. Խա. 15 ;
Ք Մատ. Ա. 18 ;
Ր Թուե. ԺԶ. 21, 45 ;
Ջ Ել. Թ. 21 ; Ղու. ԺԷ. 28 ; Իդ. 11 ;
Ն Թուե. ԺԶ. 24, 26 ; Յայտ. ԺԸ. 4 ;
* Կամ՝ պատժին
Լ Ղու. ԺԸ. 13 ; Հռովմ. Թ. 15, 16 ;
Ծ Սաղ. ԼԴ. 22 ;
Կ Գ Թագ. ԺԹ. 3 ;
Հ Հմր 26 ; Մատ. Իդ. 16, 17, 18 ; Ղու. Թ. 62 ; Փիլ. Գ. 13, 24 ;
Ղ Գործ. Ժ. 14 ;

6 մեզի, ու Ղ գիտնանք անոնք ։ Եւ
Ծ Ղովտ դռնէն դուրս ելաւ անոնց
քով, ու իր ետեւէն դուռը գոցեց,
7 Եւ ըսաւ. Ո՛վ եղբայրներս՝ կ՚աղաչեմ
8 ձեզի՝ չարութիւն մի՛ ընէք ։ Է Ահա՛
հիմա երկու աղջիկ ունիմ, որ էրիկ
մարդ չեն գիտեր, անոնք հիմա
ձեզի դուրս հանեմ, ու ձեր աչքին
առջեւ աղէկ եղածը ըրէ՛ք անոնց.
բայց միայն աս մարդոցը բան մը
մի՛ ընէք. Ղ քանզի անոր համար իմ
9 յարկիս շուքին տակը մտան ։ Եւ
անոնք ըսին. Մէկդի՛ կեցիր. ու
ըսին ալ. Է Ասիկայ պանդխտու-
թեան եկաւ, Ծ ու դատաւոր ը-
նել կ՚ուզէ. հիմա քեզի անոնցմէ
գէշ կ՚ընենք ։ Եւ սաստիկ բռնա-
դատեցին մարդը՝ այսինքն Ղովտը,
ու դուռը կոտրելու մօտեցան ։
10 Բայց այն մարդիկը ձեռքերնին եր-
կընցուցին, ու Ղովտը տանը մէջ
քովերնին առին, ու դուռը գոցե-
11 ցին. Եւ Կ տանը դուռը կայնած
մարդիկը կուրութեամբ զարկին
պզտիկէն մինչեւ մեծը. անանկ որ
դուռը գտնելէն թուլցան ։
12 Եւ մարդիկը ըսին Ղովտին.
Հոս ուրիշ ո՞վ ունիս. փեսաներդ
ու որդիներդ եւ աղջիկներդ, ու
քաղաքին մէջ ինչ որ ունիս Հ աս
13 տեղէն հանէ՛. Ինչու որ մենք աս
տեղը պիտի կործանենք. քանզի
Յ անոնց աղաղակը Տէրոջը առջեւ
մեծ եղաւ. ու Ղ Տէրը մեզ խրկեց
14 անիկայ կործանելու ։ Եւ Ղովտ
ելաւ, ու Ք իր աղջիկները առնող
փեսաներուն խօսեցաւ, ու ըսաւ.
Ր Ելէ՛ք ու աս տեղէն գացէ՛ք, ին-
չու որ Տէրը պիտի կործանէ
աս քաղաքը. Ջ բայց իր փեսանե-
րուն ծաղր ընող մը երեւցաւ ։
15 Եւ առտու եղածին պէս՝ հրեշ-
տակները արտորցուցին Ղովտը՝
ըսելով. Ն Ելի՛ր՝ կնիկդ ու հոս
գտնուած երկու աղջիկդ ա՛ռ, որ
քաղաքին *անօրէնութեանը մէջ
16 չկորսուիս ։ Եւ երբոր անիկայ
կը տնտնար, այն մարդիկը բռ-
նեցին անոր ձեռքէն՝ ու անոր կըն-
կանը ձեռքէն՝ եւ անոր աղջիկնե-
րուն ձեռքերէն՝ Լ Տէրոջը անոր ո-
ղորմելովը, Ծ ու հանեցին անիկայ,
եւ քաղաքին դուրսի դին դրին ։
17 Ու եղաւ որ երբ զանոնք դուրս
հանեցին, մէկը ըսաւ. Կ Անձդ ա-
զատելու համար փախի՛ր. Հ ետիդ
մի՛ նայիր, եւ բոլոր դաշտին մէջ
մի՛ կայնիր. լեռը փախիր, չըլլայ
18 որ կորսուիս ։ Եւ Ղովտ ըսաւ
անոնց. Ղ Ոչ՛ Տէր իմ՝ շնո՛րհք ըրէ.
19 Ահա՛ հիմա ծառադ քու առջեւդ
շնորհք գտաւ, ու իմ անձս ազա-
տելով ինծի մեծ երախտիք ըրիր.

եւ ես չեմ կրնար լեռը փախչիլ,
չըլլայ որ չարիք հասնի ինծի՝ ու
20 մեռնիմ ։ Ահա՛ աս քաղաքը՝ Մ որ
հոն փախչելու մօտ է, ու ան պըզ-
տիկ է. շնորհք ըրէ՝ հոն փախչիմ,
(չէ՞ որ անիկայ պզտիկ է,) եւ
21 իմ անձս ողջ մնայ ։ Ու ըսաւ
անոր. Ահա՛ աս բանին մէջն ալ
քու Ն աղաչանքդ ընդունեցի, որ աս
քաղաքը չկործանեմ՝ որուն հա-
22 մար խօսեցար ։ Շո՛ւտ ըրէ հո՛ն
փախիր. քանզի Օ դուն մինչեւ որ
հոն չհասնիս, ես բան մը չեմ կըր-
նար ընել. անոր համար այն քաղա-
23 քին անունը † Սեգ՚որ ‡ դրաւ ։ Ա-
րեւը երկրի վրայ կը ծագէր, երբ-
24 որ Ղովտ Սեգովրը մտաւ ։ Այն
ատենը Պ Տէրը Սոդոմին ու Գոմո-
րին վրայ ծծումբ ու կրակ տեղաց
25 Տէրոջը կողմանէ՝ երկինքէն, Եւ
այն քաղաքները, ու բոլոր դաշտը,
եւ այն քաղաքներուն բոլոր բնակիչ-
ները ու երկրի վրայ բուսածը կոր-
26 սընցուց ։ Ու Ղովտին կնիկը ետին
նայեցաւ, ու Ց աղի արձան եղաւ ։
27 Եւ Աբրահամ առտուանց կա-
նուխ ելլելով՝ Տէրոջը առջեւը կայ-
28 նած տեղը Ւ գնաց. Եւ Սոդոմին ու
Գոմորին ու բոլոր դաշտի երկրին
վրայ նայելով տեսաւ որ ահա՛ այն
երկրէն Փ ծուխին պէս մուխ
կ՚ելլէր ։
29 Այսպէս եղաւ՝ որ երբոր Աստուած
այն դաշտին քաղաքները կը կոր-
սընցընէր, Աստուած Ք Աբրահամը
միտքը բերաւ, ու երբոր Ղովտին
բնակած քաղաքները կը կորսըն-
ցընէր, այն կործանումին մէջտեղէն
Ղովտը հանեց ։
30 Եւ Ղովտը Սեգովրէն ելաւ ու
Օ լեռը բնակեցաւ, եւ իր երկու աղ-
ջիկները իր հետը. ինչու որ Սե-
գովրին մէջ բնակելու կը վախնար,
ու մէկ այրի մը մէջ բնակեցաւ՝
ինքը ու իր երկու աղջիկները ։
31 Եւ մեծ աղջիկը պզտիկին ըսաւ.
Մեր հայրը ծեր է, ու երկրին մէջ
մէկը չկայ՝ որ Ֆ ամէն երկրին սովո-
32 րութեանը պէս մեզի մտնէ ։ Եկուր
մեր հայրը գինի խմցընենք, ու իր
հետը պառկինք, ու Ա մեր հօրմէն
33 սերունդ պահենք ։ Եւ այն գիշերը
իրենց հայրը գինի խմցուցին, ու
մեծ աղջիկը մտաւ, ու իր հօրը հետ
պառկեցաւ. եւ Ղովտը չիմացաւ
34 անոր պառկիլը ու ելլելը ։ Ու
եղաւ որ հետեւեալ օրը մեծ աղջիկը
պզտիկին ըսաւ. Ահա՛ երէկ գիշեր
հօրս հետ պառկեցայ. աս գիշեր ալ
անոր գինի խմցընենք, եւ մտիր ու
իր հետը պառկէ՛, ու մեր հօրմէն
35 սերունդ պահենք ։ Եւ այն գիշերն
ալ իրենց հայրը գինի խմցուցին,

Ն. Ք. ԶՔ.
1898

Մ Յոբ. ԽԲ. 8, 9 ; Սաղ. ՃԽԵ. 19 ;
Ն Տե՛ս Գղ. ԼԲ. 25, 26 ; Ել. ԼԲ. 10 ; Բ Օր. Թ. 14 ; Մար. Զ. 5 ;
Օ Գղ. ԺԴ. 10 ; ԺԴ. 2 ;
† Այ՝ պզտիկ ;
‡ Կամ՝ Զըրուեցաւ ;
Պ Բ Օր. ԻԹ. 23 ; Ես. ԺԳ. 19 ; Երեմ. Ի. 16 ; Ծ. 40 ; Եզեկ. ԺԶ. 49, 50 ; Ովս. ԺԱ. 8 ; Ամով. Դ. 11 ; Սոփ. Բ. 9 ; Ղու. ԺԷ. 29 ; Բ Պետ. Բ. 6 ; Յուդ. 7 ;
Ր Գղ. ԺԴ. 3 ; Սաղ. ՃԷ. 34 ;
Ց Ղու. ԺԷ. 32 ;
Ք Գղ. ԺԸ. 22 ;
Ֆ Յայտ. ԺԸ. 9 ;
Ք Գղ. Ը. 1 ; ԺԸ. 23 ;
Օ Հմր 17, 19 ;
Ֆ Գղ. ԺԶ. 2, 4 ; ԼԸ. 8, 9 ; Բ Օր. ԻԵ. 5 ;
Ա Մար. ԺԲ. 19 ;

Ն․ Ք․ ՉՔ․
1898

1897

ԲբՕր․ բ․
9։

ԳբՕր․ բ․
19։

և պզտիկ աղջիկը ելաւ, ու անոր
հետ պառկեցաւ. և Ղովտը անոր
36 պառկիլը ու ելլելը չիմացաւ։ Այս-
պէս Ղովտին երկու աղջիկները
37 իրենց հօրմէն յղի մնացին։ Եւ
մեծը որդի մը ծնաւ, ու անոր
անունը Մովաբ դրաւ. Բասիկայ
Մովաբացւոց հայրն է մինչև այսօր։
38 Եւ պզտիկն ալ որդի մը ծնաւ, ու
անոր անունը Բենամմի դրաւ.
Գասիկայ Ամմոնացւոց հայրն է մին-
չև այսօր։

## ԳԼ․ Ի

1 Աբրահամ Գերարայի մէջ կը պանդխտանայ, 2
և Սառրային իր քոյրը ըլլալը կ'ուրանայ։ 3 Ա-
բիմելէք երազի մը մէջ կը յանդիմանուի Աբրա-
համին կնկանը համար. 9 և ինքն ալ կը յան-
դիմանէ Աբրահամը։ 14 Աբիմելէք Սառրան
ետ կու տայ, 16 ու զանիկայ ալ կը յանդիմա-
նէ։ 17 Աբրահամին աղօթքովը Աբիմելէքին
ընտանիքը կը բժշկուին։

Իբր 1898
ա Գլ․ ժը․
1։
բ Գլ․ ժզ․
7, 14։
գ Գլ․ ԻԶ․ 6։
դ Գլ․ ժբ․
13։ ԻԶ․ 7։
ե Գլ․ ժբ․
15։
զ Սաղ․ ՃԵ․
14։
է Յոբ․ ԼԳ․
15։
ը Հմր 7։
թ Գլ․ ժը․
23։ Հմր 18։
ժ Բ Թագ․
Ի․ 3։ Բ
Կոր․ Ա․
12։
ժա Գլ․ ԼԹ․
9։ Ղև․ Զ․
2։ Սաղ․
ԾԱ․ 4։
ժբ Գլ․ Լա․ 7։
Լե․ 5։ Եւ․
ԼԴ․ 24։ Ա
Թագ․ ԻԵ․
26, 34։
ժգ Ա Թագ․
Է․ 5։ Դ
Թագ․ Ե․
11։ Յոբ․
ԽԲ․ 8։
Յակ․ Ե․
14, 15։ Ա
Յօհ․ Ե․ 16։
ժդ Գլ․ Բ․ 17։
Ելից․ Ժզ․
32, 33։
* Եբր․ ա-
կանջներուն
խօսեցաւ․
ժե Գլ․ ԻԶ․
10։ Եւ․ ԼԲ․
21։ Յես․
Է․ 25։
ժզ Գլ․ ԼԴ․ 7։

1 Եւ Աբրահամ ա անկէ դէպ 'ի հա-
րաւային երկիրը չուեց. և բ Կա-
դէսին ու Սուրին մէջտեղը բնակե-
ցաւ, ու գ Գերարայի մէջ պան-
2 դուխտ եղաւ։ Եւ Աբրահամ իր
կնոջը Սառրային համար՝ դ Ասիկայ
իմ քոյրս է ըսաւ. և Գերարային
թագաւորը Աբիմելէք՝ ե մարդ խրր-
կեց, ու զ առաւ Սառրան։
3 Բայց Աստուած եկաւ Աբիմելէ-
քին է գիշերը երազի մէջ՝ ու ըսաւ
անոր. Ահա ատ կնկանը համար՝ որ
դուն առիր, ը պիտի մեռնիս. ինչու
4 որ անիկայ էրիկ ունի։ Բայց Աբի-
մելէք անոր մօտեցած չէր. և ըսաւ.
Ո՛վ Տէր՝ թ արդար ազգ ալ պիտի
5 մեռցնե՞ս։ Ինքը ինծի՝ Անիկայ իմ
քոյրս է չըսա՞ւ. և աս ալ՝ Անիկայ
իմ եղբայրս է ըսաւ. ժ Ես աս բանը
ուղիղ սրտով ու մաքուր ձեռքերով
6 ըրի։ Եւ Աստուած անոր ըսաւ
երազի մէջ. Ես ալ գիտցայ որ
աս բանը ուղիղ սրտով ըրիր, ու
քեզ ալ ժա ինծի դէմ մեղք գործե-
լէն ետ պահեցի. անոր համար
քեզ չթողուցի որ անոր մօտենաս։
7 Բայց հիմա կնիկը իր էրկա՛նը դար-
ձուր. ժբ քանզի անիկայ մարգարէ
է, և քեզի համար աղօթք թող
ընէ՝ որ ապրիս. և թէ որ դուն
անիկայ ետ չտաս, ժգ գիտցի՛ր որ
անշուշտ պիտի մեռնիս, դուն ժդ և
ամէն քուկիններդ։
8 Ուստի առտուանց կանուխ ելաւ
Աբիմելէք, ու կանչեց իր բոլոր
ծառաները, և բոլոր աս բաները
անոնց * պատմեց. ու մարդիկը շատ
9 վախցան։ Եւ Աբիմելէք կանչեց
Աբրահամը, ու ըսաւ անոր. Մեզի
ի՞նչ ըրիր. ու ես քեզի ի՞նչ
յանցանք ըրի, որ ժե իմ վրաս ու
թագաւորութեանս վրայ մեծ մեղք
մը բերիր. ժզ չգործուելու գործեր
10 գործեցիր ինծի։ Եւ Աբիմելէք
ըսաւ Աբրահամին. Ի՞նչ տեսար
11 որ աս բանը ըրիր։ Եւ Աբրահամ
ըսաւ. Ես կարծեցի որ իրաւցընէ
ժէ աս տեղ Աստուծոյ վախը չկայ, ու
ժը կնկանս համար զիս կը մեռցընեն։
12 Եւ տակաւին իրաւցընէ ժթ իմ քոյրս
է, հօրս աղջիկն է, բայց մօրս աղ-
ջիկը չըլլալովը՝ իմ կնիկս եղաւ։
13 Ու երբոր ի Աստուած զիս իմ հօրս
տունէն օտարութեան հանեց, ըսի
անոր. Ինծի ընելու շնորհքդ աս
ըլլայ. ո՛ւր որ երթալու ըլլանք, հոն
ի ինծի համար ըսես թէ՝ իմ եղբայրս
14 է։ Եւ Աբիմելէք՝ ի ոչխարներ, ու
արջառներ, և ծառաներ ու աղա-
խիններ առաւ, և Աբրահամին
տուաւ. անոր կնիկը Սառրան ալ
15 անոր ետ տուաւ։ Եւ Աբիմելէք
ըսաւ. Ահա՛ ի իմ երկիրս քու առ-
ջևդ է. ո՛ւր որ կ'ուզես՝ բնակէ՛։
16 Եւ Սառրային ըսաւ. Ահա՛ ի եղբօրդ
հազար կտոր արծաթ տուի. ի ահա՛
ան քեզի ի աչքերու ծածկոց ըլլայ,
բոլոր քեզի հետ եղողներուն առ-
ջևը՝ և ամենուն։ Այսպէս անի-
17 կայ յանդիմանուեցաւ։ Եւ Աբ-
րահամ ի աղօթք ըրաւ Աստուծոյ.
և Աստուած բժշկեց Աբիմելէքը,
ու անոր կնիկը և անոր աղախին-
18 ները, ու կը ծնանէին. Քանզի
Տէրը Աբրահամին կնոջը Սառրային
համար՝ ի Աբիմելէքին ընտանեացը
բոլոր արգանդները գլխովին գո-
ցեր էր։

## ԳԼ․ ԻԱ

1 Իսահակին ծնունդը, 4 ու թլփատութիւնը։ 6
Սառրա կ'ուրախանայ։ 9 Հագարը ու Իսմայէլը
դուրս կը ձգուին։ 15 Հագար նեղութեան մէջ
գտնուելով 17 Հրեշտակէն կը մխիթարուի։ 22
Աբիմելէք Բերսաբէէի մէջ ուխտ կ'ընէ Աբրա-
համին հետ։

1 Եւ Տէրը իր ըսածին պէս Սառ-
րային ա այցելութիւն ըրաւ. և
բ իր զրուցածին պէս ըրաւ Սառրա-
2 յին. Եւ Սառրա գ յղացաւ, ու որ-
դի մը ծնաւ Աբրահամին իր ծերու-
թեան ատենը, դ ան նոյն ժամա-
նակին՝ որ Աստուած ըսեր էր անոր։
3 Եւ Աբրահամ՝ իրեն ծնած՝ ու ե
Սառրային իրեն ծնած իր որդւոյն
4 անունը ե Իսահակ դրաւ։ Եւ Աբ-
րահամ զ թլփատեց իր որդին Իսա-
հակը՝ երբոր ութօրուան եղաւ,
է ինչպէս որ Աստուած իրեն պա-
5 տուիրեր էր։ Եւ ը Աբրահամ հա-
րիւր տարեկան էր, երբոր իր որդին
6 Իսահակ ծնաւ իրեն։ Եւ Սառրա
ըսաւ. թ Աստուած իս խնդացուց.
ամէն լսողը ժ ինծի հետ պիտի խըն-
7 դայ։ Նաև ըսաւ. Աբրահամին
ո՞վ կ'ըսէր, որ Սառրան տղաքներ
պիտի սնուցանէ. ժա քանզի իր ծե-
րութեան ատենը իրեն որդի ծնայ։

Ն․ Ք․ ՉՔ․
1898

ժէ Գլ․ ԽԲ․
18։ Սաղ․
ԼԶ․ 1,
Առակ․ Ժզ․
6։
ժը Գլ․ ԺԲ․
12։ ԻԶ․ 7։
ժթ Տե՛ս Գլ․
ԺԱ․ 29։
ի Գլ․ ԺԲ․ 1,
9, 11, ա,
Եբր․ ԺԱ․
8։
իա Գլ․ ԺԲ․
13։
իբ Գլ․ ԺԲ․
16։
իգ Գլ․ ԺԳ․ 9։
իդ Հմր 5։
իե Գլ․ ԻԶ․ 11։
իզ Գլ․ ԻԴ․
65։
իէ Յոբ․ ԽԲ․
9, 10։
իը Գլ․ ԺԲ․
17։

ա Ա Թագ․
Բ․ 21։
բ Գլ․ ԺԷ․
19։ ԺԸ․
10, 14։
Գաղ․ Դ․
23, 28։
գ Գոր․ Է․ 8։
Գաղ․ Դ․
22։ Եբր․
ԺԱ․ 11։
դ Գլ․ ԺԷ․ 2․
21։
ե Գլ․ ԺԷ․
19։
զ Գոր․ Է․ 8։
է Գլ․ ԺԷ․
10, 12։
Իբր 1897
ը Գլ․ ԺԷ․ 1,
17։
թ Սաղ․ ՃԻԶ․
2։ Ես․ ԾԴ․
1։ Գաղ․ Դ․
27։
ժ Ղու․ Ա․
58։
ժա Գլ․ ԺԸ․
11, 12։

Ն . Ք . ՂՔ .
իրր 1897

Գլ . ԺԶ . 1 ։
Գլ . ԺԶ . 15 ։
Գաղ . Դ . 22 .
իրր 1892
Գաղ . Դ . 30 . Տե՛ս Գլ . ԻԵ . 6 . և ԼԶ . 6 , 7 ։
Գլ . ԺԵ . 18 ։
Հռով . Թ . 7 . 8 . Եբր . ԺԱ 18 ։
Հմր 18 ։ Գլ . ԺԶ . 10 ։ ԺԷ . 20 ։
Յօհ . Ը . 35 ։
Ել . Գ . 7 .
Հմր 13 ։
Թու . ԻԲ . 31 . Տե՛ս Դ Թագ . Զ . 17 , 18 , 20 . Ղու . ԻԴ . 16 . 31 ։
Գլ . ԻԸ . 15 ։ ԼԹ . 2 , 3 . 21 .
Գլ . ԺԶ . 12 .
Գլ . ԻԶ . 4 .
Գլ . Ի . 2 , ԻԶ 26 .
Գլ . ԻԶ . 28 ։
Յես . Բ . 12 ։ Ա Թագ . ԻԴ . 21 .

8 Եւ տղան մեծցաւ , ու կաթէն
կտրուեցաւ և Աբրահամ մեծ
խնջոյք ըրաւ Իսահակին կաթէն
կտրուած օրը ։
9 Եւ Սառրա տեսնելով որ Եգիպ-
տացի Հագարին որդին՝ որն որ
Աբրահամին ծնաւ , ծաղր
10 կ՚ընէ . Ըսաւ Աբրահամին . Վռ-
ընտէ՛ աս աղախինը ու անոր
որդին . ինչու որ աս աղախինին
որդին՝ իմ որդւոյս Իսահակին հետ
11 ժառանգ պիտի չըլլայ ։ Եւ աս
բանը Աբրահամին շատ դժուար ե-
րեւցաւ՝ իր որդւոյն պատճառաւը .
12 Եւ Աստուած ըսաւ Աբրահամին
Տղուն համար ու աղախինիդ
համար՝ աս բանը թող քեզի դը-
ժուար չերեւնայ . Սառրային քեզի
ըսած բոլոր խօսքը մտիկ ըրէ .
քանզի Իսահակով քեզի սերունդ
13 պիտի կոչուի . Եւ աղախինին որ-
դին ալ ազգ մը պիտի ընեմ . ին-
չու որ անիկայ քու սերունդդ է ։
14 Ու Աբրահամ առտուանց կանուխ
ելաւ , և հաց ու տիկ մը ջուր ա-
ռաւ , ու Հագարին տուաւ՝ անոր
ուսին վրայ դնելով . և տղան ալ
տուաւ , ու խրկեց անիկայ . և
գնաց անիկայ ու Բերսաբէէի անա-
պատին մէջ անդին ասդին կը պը-
15 տըտէր ։ Եւ տիկէն ջուրը հա-
տաւ , ու մացառներուն մէկուն
16 տակը ձգեց տղան ։ Եւ նետընկէցի
մը չափ հեռու գնաց . ու դիմացը
նստաւ . ինչու որ ըսաւ Տղուն
մեռնիլը չտեսնեմ . և դիմացը նըս-
տելով իր ձայնը վերցուց ու լացաւ ։
17 Եւ Աստուած տղուն ձայնը լսեց .
ու Աստուծոյ հրեշտակը երկինքէն
կանչեց Հագարը , ու անոր ըսաւ .
Հագար՝ քեզի ի՞նչ եղաւ . մի՛
վախնար . ինչու որ Աստուած լսեց
տղուն ձայնը՝ անոր եղած տեղէն ։
18 Ելի՛ր , տղան վերցո՛ւր , ու ձեռ-
քովդ օգնէ անոր . ինչու որ մեծ
19 ազգ մը պիտի ընեմ անիկայ ։ Եւ
Աստուած Հագարին աչքերը բա-
ցաւ , ու ջրհոր մը տեսաւ . և գնաց
ու տիկը ջրով լեցուց . ու տղուն
20 խմցուց ։ Եւ Աստուած տղուն
հետ էր , որ մեծցաւ ու անապատը
բնակեցաւ , և աղեղնաւոր եղաւ ։
21 Ու Փառանի անապատին մէջ բնա-
կեցաւ . և մայրը անոր կնիկ մը
առաւ Եգիպտոսի երկրէն .
22 Ու եղաւ որ ան ատենը Աբիմե-
լէք և իր սպարապետը Փիքող
խօսեցան Աբրահամին ըսելով .
Աստուած քեզի հետ է ամէն բանի
23 մէջ ինչ որ գործես Եւ հիմա
հոս ինծի երդում ըրէ Աստու-
ծով որ ինծի ու իմ զաւակիս . և
իմ սերունդիս հետ նենգութեամբ
պիտի չվարուիս . հապա իմ քեզի
ըրած երախտիքիս պէս պիտի ընես
ինծի . ու աս երկրիս՝ որուն մէջ
24 բնակեր ես ։ Եւ Աբրահամ ըսաւ .
25 Ես երդում կ՚ընեմ ։ Ու Աբրա-
համ յանդիմանեց Աբիմելէքը ջըր-
հորի մը համար որն որ Աբիմե-
լէքին ծառաները բռնութեամբ
26 առած էին . Եւ Աբիմելէք ըսաւ .
Աս բանը ով ընելը չեմ գիտեր .
և դուն ալ չիմացուցիր ինծի . ու
ես ալ լսած չէի , բայց միայն այս-
27 օր ։ Եւ Աբրահամ ոչխարներ ու
արջառներ առաւ ու Աբիմելէքին
տուաւ ու երկուքնին ալ ուխտ
28 ըրին . Եւ Աբրահամ ոչխարներէն
եօթը հատ էգ գառներ զատ դը-
29 րաւ ։ Ու Աբիմելէք ըսաւ Աբրա-
համին . Ի՞նչ պիտի ըլլան աս
եօթը էգ գառինքը՝ որ դուն զատ
30 դրիր . Եւ անիկայ ըսաւ . Աս
եօթը էգ գառինքը իմ ձեռքէս
առնես , որ անոնք ինծի վկայու-
թիւն ըլլան՝ թէ աս հորը ես փո-
31 րեր եմ . Անոր համար ան տեղին
անունը *Բերսաբէէ կոչեց ինչու
որ երկուքնին ալ հոն երդում ը-
32 րին . Եւ Բերսաբէէի մէջ ուխտ
ըրին . ան ատենը ելաւ Աբիմելէք
ու անոր սպարապետը Փիքող . և
Փղշտացւոց երկիրը դարձան ։
33 Եւ Աբրահամ ծառեր տնկեց Բեր-
սաբէէի մէջ . ու հոն յաւիտենա-
կան Աստուծոյ Եհովային անու-
34 նը կանչեց ։ Եւ Աբրահամ շատ
օրեր պանդխտութիւն ըրաւ Փղըշ-
տացւոց երկրին մէջ ։

## ԳԼ . ԻԲ

1 Աստուած Աբրահամը կը փորձէ՝ հրամայելով որ իր Իսահակ որդին զոհ ընէ . 3 Աբրահամին հաւատքը և հնազանդութիւնը ։ 11 Հրեշտակը կ՚արգիլէ զանիկայ Իսահակը մորթելէն . 13 և անոր տեղը Աբրահամ խոյ մը կը զոհէ ։ 14 Ան տեղը Եհովայիրէ կ՚անուանի ։ 15 Աբրահամ նորէն կ՚օրհնուի ։ 20 Նաքովրի ազգահամարը մինչև Ռեբեկա ։

1 Ու եղաւ որ աս բաներէն ետքը՝
Աստուած փորձեց Աբրահամը ,
ու ըսաւ անոր . Ով Աբրահամ .
և անիկայ ըսաւ . Ահա ես հոս եմ ։
2 Եւ անիկայ ըսաւ . Հիմա Քու սի-
րած միակ որդիդ Իսահակը
առ , ու Մօրիայի երկիրը գնա ,
և հոն զանիկայ ողջակէզ ըրէ լեռ-
ներուն մէկուն վրայ՝ որն որ ես քե-
3 զի պիտի ըսեմ ։ Եւ Աբրահամ
առտուանց կանուխ ելաւ , ու իր
իշուն համետը դրաւ , և իր հետը
երկու ծառայ , ու իր Իսահակ որ-
դին առաւ . և ողջակէզի համար
փայտ ճեղքեց . ու ելաւ գնաց ան
տեղը՝ որ Աստուած իրեն ըսաւ ։
4 Ու երրորդ օրը Աբրահամ իր աչքե-
րը վեր վերցուց , ու հեռուէն տե-

Ն . Ք . ՂՔ .
իրր 1892

Տե՛ս Գլ . ԻԶ 15 , 18 , 20 , 21 , 22 ։
Գլ ԻԶ . 31 .
Գլ . ԼԳ . 8 ։
Գլ . Լ . 48 , 52 ։
Գլ . ԻԶ . 33 ։
* Այսինքն ջրհոր երդման ։
իրր 1891
Օր . ԼԳ . 27 ։ Ես . Խ . 28 ։ Հռով . ԺԶ . 26 ։ Ա Տիմ . Ա . 17 ։
Գլ . Դ . 26 ։

1872
Տե՛ս Հնախ . Յովսեփոսի ։
Ա Կոր . Ժ . 13 ։ Եբր . ԺԱ . 17 ։
Յակ . Ա . 12 ։ Ա Պետ . Ա . 7 ։
Եբր . ԺԱ . 17 .
Բ Մն . Գ . 1 .

Ն․ Ք․ ԴՔ․ ԻԲՐ 1872

Փ Ցօհ․ ԺԹ․ 17։

Ի Եբր․ ԺԱ․ 17։ Յակ․ Բ․ 21։

Ղ Իմաստ․ ԺԵ․ 22։ Միք․ Զ․ 7, 8։

Ի Գլ․ ԻԶ․ 5։ Յակ․ Բ․ 22։

* Քր՝ Տէրը պիտի տեսնէ, կամ Տէրը պիտի նախախնամէ։

Լ Սաղ․ ՃԵ․ 9։ Ղուկ․ Ա․ 73։ Եբր․ Զ․ 13, 14։

Բ Գլ․ ԺԵ․ 5։ Երեմ․ ԼԳ․ 22։

Ծ Գլ․ ԺԳ․ 16։

Ի Գլ․ ԻԴ․ 60։

Լ Միք․ Ա․ 9։

† Եբր․ դուռը

Ի Գլ․ ԺԲ․ 3։ ԺԸ․ 18։ ԻԶ․ 4։ Գործ․ Գ․ 25։ Գաղ․ Գ․ 8, 9, 16, 18։

Ծ Հռմ 3, 10։ Գլ․ ԻԶ․ 5։

Լ Գլ․ ԻԱ․ 31։

5 սաւ ան տեղը։ Եւ Աբրահամ ըսաւ
իր ծառաներուն․ Դուք իշուն հետ
հո՛ս մնացէք, և ես ու տղան մինչև
հոն երթանք, ու երկրպագութիւն
ընենք, և նորէն ձեզի դառնանք։
6 Ու Աբրահամ ողջակէզին փայտերը
առաւ, ու Փ իր որդւոյն Իսահակին
վրայ դրաւ․ և ինքը իր ձեռքը
առաւ կրակը ու դանակը, ու
7 երկուքնին մէկտեղ գացին։ Եւ
Իսահակ իր հօրը Աբրահամին խօ-
սեցաւ ու ըսաւ․ Հայր իմ․ և
անիկայ ըսաւ․ Ահա՛ ես հոս եմ՝ ո՛ր-
դիս ։ Եւ անիկայ ըսաւ․ Ահա
կրակը ու փայտը, բայց ողջակէզ
8 ըլլալու գառը ո՞ւր է։ Եւ Աբրա-
համ ըսաւ․ Աստուած իրեն ողջա-
կէզ ըլլալու գառը պիտի պատ-
րաստէ, ո՛րդեակ իմ։ Այսպէս
9 երկուքը մէկտեղ գացին։ Ու եկան
ան տեղը՝ որ Աստուած անոր ըսեր
էր․ և Աբրահամ հոն սեղան շի-
նեց, ու փայտերը շարեց, և իր
որդին Իսահակը կապեց, ու Ի զա-
նիկայ սեղանին փայտերուն վրայ
10 դրաւ։ Եւ Աբրահամ իր ձեռքը
երկընցուց, ու դանակը առաւ
11 որ իր որդին մորթէ։ Եւ Տէրոջը
հրեշտակը երկինքէն անոր կանչեց,
ու ըսաւ․ Աբրահա՛մ Աբրահա՛մ․
և անիկայ ըսաւ․ Ահա՛ ես հոս եմ։
12 Եւ ըսաւ․ Ղ Տղուն ձեռք մի՛ դպցը-
ներ, և անոր բան մը մի՛ ըներ․
քանզի Ի հիմա գիտցայ որ Աստուծմէ
կը վախնաս․ որովհետև քու մէկ-
հատիկ որդիդ ինծմէ չխնայեցիր։
13 Եւ Աբրահամ իր աչքերը վեր վեր-
ցուց՝ ու նայեցաւ, և ահա՛ իր ետևը
խիտ մացառներուն մէջը եղջիւրնե-
րէն բռնուած խոյ մը կար․ ու Աբ-
րահամ գնաց, ու խոյը առաւ, և
զանիկայ իր որդւոյն տեղը ողջակէզ
14 մատուց։ Եւ Աբրահամ ան տե-
ղին անունը *Եհովայիրէ կոչեց, որ
մինչև այսօր կ'ըսուի, Տէրը լեռանը
15 մէջ պիտի երևնայ։ Եւ Տէրոջը
հրեշտակը երկրորդ անգամ երկին-
16 քէն Աբրահամը կանչեց, Ու ըսաւ․
Լ Իմ անձիս վրայ երդում ըրի՝ կ'ըսէ
Տէրը, որովհետև աս բանը ըրիր,
ու ինծի համար քու մէկհատիկ որ-
17 դւոյդ չխնայեցիր, Քեզ օրհնելով
պիտի օրհնեմ, ու քու սերունդդ
Բ երկինքի աստղերուն, ու Ծ ծովե-
զերքը եղող աւազին պէս խիստ պի-
տի շատցընեմ․ և Ի քու սերունդդ
Լ իր թշնամիներուն † քաղաքները
18 պիտի ժառանգէ․ Ի Ու երկրի բոլոր
ազգերը քու սերունդովդ պիտի օրհ-
նուին․ Ծ որովհետև իմ ձայնիս ա-
19 կանջ դրիր։ Այսպէս Աբրահամ
իր ծառաներուն դարձաւ, ու ելան
ու մէկտեղ Լ Բերսաբէէ գացին․ և
Աբրահամ Բերսաբէէի մէջ կը
բնակէր։
20 Ու եղաւ որ աս բաներէն ետքը՝
Աբրահամին պատմուեցաւ՝ ըսելով․
Ահա Ն Մեղքան ինքն ալ որդիներ
21 ծնաւ քու եղբօրդ Նաքովրին․ Առ-
ջինեկ որդին Ջ Հուսը, և անոր եղ-
բայրը Բուզը, ու Ղ Արամին հայրը
22 Կամուէլը, Եւ Քազադը, ու Ա-
զաւը, և Փաղդասը, ու Յեդլա-
23 փը, և Բաթուէլը։ Եւ Ց Բա-
թուէլ ծնաւ Ի Ռեբեկան․ աս ութը
որդիները Մեղքան ծնաւ Աբրահա-
24 մին եղբօրը Նաքովրին։ Եւ անոր
հարճը՝ որուն անունը Ռէումա էր,
անիկայ ալ ծնաւ Տեբաքը, և Գա-
ամը, ու Թաքասը, և Մաաքան։

Ն․ Ք․ ԴՔ․ ԻԲՐ 1872

Ն Գլ․ ԺԱ․ 29։

Ջ Յոբ Ա 1։

Ղ Յոբ․ ԼԲ․ 2։

Ց Գլ․ ԻԴ․ 15։

Ի Հռով․ Թ․ 10։

## ԳԼ․ ԻԳ

1 Սառայի կենացը օրերը ու մահը․ 3 Աբրա-
համ ծախու կ'առնէ Մաքփելայի այրը, 19 ու
Սառան հոն կը թաղէ։

1 Եւ Սառա հարիւր քսանուեօթը
տարի ապրեցաւ․ այսոնք եղան
2 Սառային կենացը տարիները։ Եւ
Սառա մեռաւ Ա Կարիաթարբայի
մէջ, որ է Բ Քեբրոն՝ Քանանու երկ-
րին մէջ․ ու Աբրահամ Սառային
համար սուգ ընելու ու ողբալու
3 եկաւ։ Եւ Աբրահամ իր մեռելին
քովէն ելաւ, ու Քետին որդինե-
4 րուն հետ խօսեցաւ, ըսելով․ Գ Ես
ձեր մէջը օտարական ու պանդուխտ
եմ․ ձեր մէջը ինծի Փ գերեզմանի
ստացուածք տուէք, որ իմ երեսիս
5 առջեւէն մեռելս թաղեմ։ Եւ Քե-
տին որդիները պատասխան տուին
6 Աբրահամին, ու անոր ըսին․ Տէ՛ր
իմ՝ մտիկ ըրէ մեզի, դուն մեր
մէջը Ի իշխան Աստուծոյ ես․ մեր
ամենէն ընտիր գերեզմանին մէջը
թաղէ քու մեռելդ․ քու մեռելդ
թաղելու համար՝ մեզմէ մէկը չխնա-
յեր իր գերեզմանը քեզի տալու։
7 Եւ Աբրահամ ելաւ, ու խոնարհու-
թիւն ըրաւ ան երկրին ժողովուր-
8 դին՝ Քետին որդիներուն․ Եւ ա-
նոնց զրուցեց՝ ըսելով․ Թէ որ կը
հաճիք՝ որ ես իմ երեսիս առջեւէն
մեռելս թաղեմ, ինծի՛ մտիկ ըրէք․
և ինծի համար Սահառին որդւոյն
9 Եփրոնին հետ խօսեցէ՛ք, Որ իր
արտին ծայրը եղած ‡ Մաքփելայի
այրը ինծի տայ․ անիկայ ձեր մէջը
ինծի գերեզմանի ստացուածք ըլլա-
10 լու՝ համար լման գնով տայ։ Ու
Եփրոն՝ Քետին որդւոցը մէջ կը
նստէր։ Եւ Քետացի Եփրոնը
պատասխան տուաւ Աբրահամին՝
Ղ Երբոր իր քաղաքին դուռը մտնող
բոլոր Քետին որդիները կը լսէին,
11 ու ըսաւ․ Ի Ոչ․ Տէր իմ, ինծի
մտիկ ըրէ արտը քեզի կու տամ,
և հոն եղած այրն ալ քեզի կու

1860

Ա Յես․ ԺԴ․ 15։ Դատ․ Ա․ 10։

Բ Գլ․ ԺԳ․ 18։ Հմր 19։

Գ Գլ․ ԺԷ․ 8։ Ա Մն․ ԻԹ․ 15։ Սաղ․ ՃԺ․ 12։ Եբր․ ԺԱ․ 9, 13։

Փ Գործ․ Է․ 5։

Ի Գլ․ ԺԴ․ 2։ ԺԴ․ 14։ ԻԴ․ 35։

‡ Քր՝ կրկնութիւն։

Ղ Գլ․ ԼԴ․ 20, 24։ Հռութ․ Դ․ 4։

Ի Տես Բ Թագ․ ԻԴ․ 21-24։

Ն. Ք. ԳՔ.
1860

տամ . իմ ժողովուրդիս որդւոցը
առջևը անոր քեզի տուի . թաղէ՛ քու
12 մեռելդ ։ Եւ Աբրահամ անոր երկ-
րին ժողովուրդին առջևը խոնար-
13 հութիւն ըրաւ , Ու Եփրոնին խօ-
սեցաւ , երբոր անոր երկրին ժողո-
վուրդը կը լսէին , ու ըսաւ . Բայց
թէ որ [illegible] , կ՚աղա-
չեմ քեզի՝ ինծի՛ մտիկ ըրէ . ես ար-
տին ստակը տամ , ա՛ռ ինծմէ , ու
14 ես իմ մեռելս հոն թաղեմ ։ Ու
Եփրոն պատասխան տուաւ Աբրա-
15 համին՝ ու անոր ըսաւ . Տէր իմ՝ լսէ՛

ը Եւ. Լ. 15 ։ Եզեկ. ԽԵ. 12 ։

ինծի . գետինը չորս հարիւր [ը] սիկղ
արծաթոյ կ՚արժէ , իմ ու քու մէջ-
տեղդ անիկա ի՞նչ է . ուրեմն թաղէ՛
16 քու մեռելդ ։ Եւ Աբրահամ Եփ-
րոնին մտիկ ըրաւ . ու Աբրահամ

թ Երեմ. ԼԲ. 9 ։

[թ] կշռեց արծաթը , [illegible] Եփ-
րոնին , ինչպէս որ անիկայ Քետին
որդւոցը առջևը խօսեր էր , [illegible]՝
չորս հարիւր սիկղ արծաթ՝ վաճա-
ռականներուն մէջ անցած [illegible] ։

ծ Գլ. ԻԵ. 9 ։ ԽԹ. 30 , 31 , 32 ։ Ծ. 13 ։ Գործ. Է. 16 ։

17 Ու [ծ] Եփրոնին արտը՝ որ Մաքփելա-
յին մէջ Մամբրէին դիմացն է ,
արտը՝ ու հոն եղած այրը՝ ու անոր
բոլորտիքի սահմաններուն մէջ
եղած արտին մէջի բոլոր ծառերը՝
18 Աբրահամին ստացուածք ըլլալու
համար հաստատուեցաւ , անոր
քաղաքին դռնէն մտնող բոլոր Քե-
19 տին որդւոցը առջևը ։ Եւ անկէ
ետքը Աբրահամ իր կնիկը Սառան
թաղեց Մամբրէին դիմացը եղող
Մաքփելայի արտին այրին մէջը՝ որ
է Քեբրոն Քանանու՛ երկրին մէջ ։

է Տե՛ս Հռութ. Դ. 7 , 8 , 9 , 10 ։ Երեմ. ԼԲ. 10 , 11 ։

20 Եւ արտը՝ ու հոն եղած այրը՝ [է] Քե-
տին որդիներէն Աբրահամին գերեզ-
մանի ստացուածք ըլլալու համար
հաստատուեցաւ ։

## ԳԼ. ԻԴ

1 Աբրահամ կ՚երդմնցընէ իր ծառան ։ 10 Ծառային ճամբորդութիւնը , 12 և աղօթքը ։ 15 Ռեբեկան անոր կը հանդիպի ջրհորին քովը . 18 անոր ջուր կը խմցընէ , 22 և պարգև կ՚ընդունի , 24 և իր որո՛ւ ցեղէ ըլլալը կը ծանուցանէ անոր ։ 29 Լաբան իր տունը կ՚ընդունի զանիկայ ։ 34 Ծառան իր գալուն պատճառը կը պատմէ ։ 50 Լաբան և Բաթուէլ կ՚ընդունին ծառային առաջարկութիւնը ։ 58 Ռեբեկան կը հաճի երթալու ։ 62 Իսահակ կը հանդիպի անոնց՝ դաշտին մէջ ։

ա Գլ. ԺԸ. 11 ։ ԻԱ. 5 ։
բ Գլ. ԺԳ. 2 ։ Հմր 35 ։ Սաղ. ՃԺԲ. 3 ։ Առակ. Ժ. 22 ։
գ Գլ. ԺԵ. 2 ։
դ Հմր 10 ։ Գլ. ԼԹ. 4 , 5 , 6 ։
1857
ե Գլ. ԽԷ. 29 ։ Ա Մն. ԻԹ. 24 ։ Ողբ. Ե. 6 ։
զ Գլ. ԺԴ. 22 ։ Բ Օր. Զ. 13 ։ Յես. Բ. 12 ։
է Գլ. ԻԶ. 35 ։ ԻԷ. 46 ։ ԻԸ. 2 ։ Եւ. ԼԴ. 16 ։ Բ Օր. Է. 3 ։
ը Գլ. ԺԲ. 1 ։

1 Եւ Աբրահամ [ա] օրերը անցուցած
[բ] ծերացած էր . ու Տէրը [գ] ամէն
2 բանի մէջ օրհնեց Աբրահամը ։ Եւ
Աբրահամ ըսաւ [դ] իր տանը երէց
ծառային՝ որ [ե] իր բոլոր ունեցածին
վերակացուն էր . Կ՚աղաչեմ քեզի
[զ] ձեռքդ իմ երանքիս տա՛կը դիր .
3 Եւ քեզ [է] կ՚երդմնցընեմ Տէրոջմով ,
որ երկինքին Աստուածը ու երկրին
Աստուածն է , որ [ը] իմ որդւոյս կնիկ
չառնես Քանանացւոց աղջիկներէն ,
4 որոնց մէջը որ ես կը բնակիմ . Հա-
պա [թ] իմ երկիրս ու իմ ազգական-

Ն. Ք. ԳՔ.
1857

ներուս [բ] երթաս , ու իմ որդւոյս
5 Իսահակին անկէ կնիկ առնես ։ Եւ

Բ Գլ. ԻԲ. 9 ։

ծառան ըսաւ անոր . Գուցէ կնիկը
իմ ետևէս աս երկիրը գալ չուզէ ,
կ՚ըլլա՞յ որ քու որդիդ ան երկիրը
դարձնեմ՝ ուսկից որ դուն ելար .
6 Եւ Աբրահամ ըսաւ անոր . Զգու-
շացի՛ր որ իմ որդիս հոն չդարձնես ։

ժ Գլ. ԺԲ. 1 , 7 ։

7 Երկնից Տէր Աստուածը՝ որ [ժ] զիս
իմ հօրս տունէն , ու իմ ծնած երկ-
րէս հանեց , և որ խօսեցաւ ինծի , ու

ի Գլ. ԺԲ. 7 ։ ԺԳ. 15 ։ ԺԵ. 18 ։ ԺԷ. 8 ։ Եւ. ԼԲ. 13 ։ Բ Օր. Ա. 8 ։ ԼԴ. 4 ։ Գործ. Է. 5 ։

երդում ըրաւ ինծի , ըսելով . [ի] Աս
երկիրը քու սերունդիդ պիտի տամ ,
[լ] Անիկայ իր հրեշտակը քու առջևդ
պիտի խրկէ , ու դուն անկէ իմ որ-
8 դւոյս կնիկ պիտի առնես ։ Եւ թէ

լ Եւ. ԻԳ. 20 , 23 ։ ԼԳ. 2 ։ Եբր. Ա. 14 ։

որ կնիկը քու ետևէդ գալ չուզէ ,
[խ] աս իմ երդումէս դուն անպարտ
կ՚ըլլաս . միայն թէ իմ որդիս հոն

խ Յես. Բ. 17 , 20 ։

9 չդարձնես ։ Եւ ծառան իր տիրո-
ջը Աբրահամին երանացը տակը
դրաւ իր ձեռքը , ու աս բանին հա-
մար երդում ըրաւ անոր ։
10 Եւ ծառան իր տիրոջը ուղտերէն

ծ Հմր 2 ։

տասը ուղտ առաւ ու գնաց . [ծ] քանզի
իր տիրոջը բոլոր բարիքները իր
ձեռքն էր . և ելաւ ու դէպ ՚ի [*] Մի-
ջագետք Նաքովրին քաղաքը գնաց ։

* Եբր. Արամ Նահարայիմ

կ Գլ. ԻԷ. 43 ։

11 Եւ քաղաքին դուրսի դին ուղտերը
նստեցուց ջրհորի մը քով իրիկուան
դէմ՝ [հ] կնիկներուն ջուր քաշելու

հ Եւ. Բ. 16 ։ Ա Թագ. Թ. 11 ։

12 ելած ատենը . Եւ ըսաւ . [ձ] Ո՛վ Տէր
իմ տիրոջս Աբրահամին Աստուածը ,

ձ Հմր 27 ։ Գլ. ԻԶ. 24 ։ ԻԸ. 13 ։ ԼԲ. 9 ։ Եւ. Գ. 6 , 15 ։

կ՚աղաչեմ քեզի՝ [ղ] յաջողէ ինծի այս-
օր , և իմ տիրոջս Աբրահամին բա-
13 րերարութի՛ւն ըրէ . Ահա՛ [ճ] ես ջու-

ղ Նեեմ. Ա. 11 ։ Սաղ. ԼԷ. 5 ։

րի աղբիւրին քովը կը կայնիմ . և
[մ] աս քաղաքիս բնակչացը աղջիկները
14 ջուր հանելու կ՚ելլեն ։ Եւ ըլլայ թէ՝

ճ Հմր 43 ։
մ Գլ. ԻԹ. 9 ։ Եւ. Բ. 16 ։

երբոր աղջիկին ըսեմ . Շնո՛րհք
ըրէ սափորդ իջեցո՛ւր որ խմեմ . ու
անիկայ ըսէ թէ՝ Խմէ՛ , ու քու ուղ-
տերուդ ալ խմցընեմ , անիկայ ըլ-
լայ քու Իսահակ ծառայիդ համար
սահմանածդ . և [յ] ասով գիտնամ՝ որ
իմ տիրոջս բարերարութիւն ըրիր ։

յ Տե՛ս Դատ. Զ. 17 , 37 ։ Ա Թագ. Զ. 7 ։ ԺԴ. 8 ։ Ի. 7 ։

15 Ու եղաւ որ տակաւին իր խօսքը
չմընցուցած , ահա՛ Աբրահամին
եղբօրը Նաքովրին կնոջը [ն] Մեղքա-
յին որդւոյն Բաթուէլին ծնած Ռե-

ն Գլ. ԺԱ. 29 ։ ԻԲ. 23 ։

բեկան եկաւ , իր ուսին վրայ սափոր
16 մը ունենալով ։ Եւ աղջիկը [շ] խիստ

շ Գլ. ԻԶ. 7 ։

գեղեցիկ տեսքով կոյս մըն էր , ու է-
րիկ մարդ մը զանիկայ չէր գիտեր .
և անիկայ իջաւ աղբիւրը , ու իր սա-
17 փորը լեցուց ու կը դառնար ։ Եւ
ծառան զանիկայ դիմաւորելու վա-
զեց , ու ըսաւ . Շնո՛րհք ըրէ՝ քու
սափորէդ ինծի քիչ մը ջո՛ւր խմցուր ։
18 [ո] Եւ անիկայ ըսաւ . Խմէ՛ տէր իմ .

ո Ա Պետ. Գ. 8 ։ Դ. 9 ։

ու շուտով սափորը իր ձեռքին վրայ
19 իջեցուց , և խմցուց անոր ։ Ու եր-
բոր անոր խմցուց լմնցուց , ըսաւ .

Ն. Ք. ԴՃ.
1739

41 փախչէր ։ Այսպէս եղայ քսան
տարի քու տանդ մէջ . ‡քու երկու
աղջիկներուդ համար տասնուչորս
տարի ծառայեցի քեզի , և հօտե-
րուդ համար վեց տարի ծառայեցի ,
և +իմ վարձքս տասը անգամ փո-
42 խեցիր ։ °Թէ որ իմ հօրս Աստուա-
ծը , Աբրահամին Աստուածը , և §Ի-
սահակին Երկիւղը ինծի հետ չըլ-
լար , իրաւցընէ զիս հիմա դատարկ
կը խրկէիր . −Աստուած իմ տա-
ռապանքս ու իմ ձեռքիս աշխա-
տութիւնը տեսաւ , ու երէկ գիշեր
‡ քեզ յանդիմանեց ։
43 Եւ Լաբան պատասխան տուաւ ,
ու ըսաւ Յակոբին . Աս աղջիկները
իմ աղջիկներս են , և աս որդիները
իմ որդիներս են , և աս հօտերը իմ
հօտերս են , և ամէնը՝ որ կը տես-
նես , իմս են . և ի՞նչ ընեմ այսօր
աս իմ աղջիկներուս՝ ու իրենց ծնած
44 զաւակներուն ։ Ուստի հիմա ե-
կուր , ‡ես ու դուն ուխտ ընենք ,
որ իմ ու քու մէջտեղդ ‡վկայու-
45 թեան համար ըլլայ ։ Եւ Յակոբ
‡քար մը առաւ , ու արձան կանգ-
46 նեց զանիկայ ։ Եւ Յակոբ իր եղ-
բայրներուն ըսաւ . Քարեր ժողվե-
ցէք . և անոնք քարեր առին՝ ու
դէզ մը ըրին , և հոն՝ դէզին վրայ
47 հաց կերան ։ Ու Լաբան անոր ա-
նունը՝ *Եէկար սահադութա դը-
րաւ , բայց Յակոբ անոր անունը
48 †Գաղաադ դրաւ ։ Եւ Լաբան ը-
սաւ . ‡Աս դէզը իմ ու քու մէջ-
տեղդ վկայ մըն է այսօր . անոր հա-
մար անոր անունը Գաղաադ ըսուե-
49 ցաւ . Եւ ‡‡Մասփա ալ ըսուեցաւ .
քանզի ըսաւ . Մենք իրարմէ զա-
տուած ատեննիս , իմ ու քու մէջ-
50 տեղդ Տէրը դիտէ ։ Թէ որ իմ աղ-
ջիկներս վշտացընես , և կամ թէ՛ որ
իմ աղջիկներուս վրայ ուրիշ կնիկ-
ներ առնես , հետերնիս մէկը չկայ .
ահա իմ ու քու մէջտեղդ վկայ՝ Աս-
51 տուած է ։ Եւ Լաբան ըսաւ Յա-
կոբին . Ահա աս դէզը , և ահա իմ
ու քու մէջտեղդ իմ կանգնած ար-
52 ձանս . Աս դէզը վկայ ու աս ար-
ձանը վկայ է , որ աս դէզէն չանց-
նիմ քեզի գալու , և դուն աս դէ-
զէն ու աս արձանէն չանցնիս ինծի
53 գալու , չարիք ընելու համար ։ Աբ-
րահամին Աստուածը , և Նաքովրին
աստուածը , անոնց հայրերուն աս-
տուածը մեր մէջը դատաւոր ըլ-
լան ։ Եւ Յակոբ ‡իր հօրը Իսահա-
կին Երկիւղովը ‡երդում ըրաւ ։
54 Եւ Յակոբ զոհեր մատոյց լեռա-
նը վրայ , ու իր եղբայրները հաց
ուտելու հրաւիրեց . և հաց կերան ,
55 ու գիշերը լեռը մնացին ։ Եւ Լա-
բան առտուանց խանուըս ելաւ , ու

‡ Գլ. ԻԹ. 27, 28։
+ Հմր 7։
° Սաղ. ճիդ. 1, 2։
§ Հմր 53։ Ես. Ը. 13։
− Գլ. ԻԹ. 32։ Ել. Գ. 7։
‡ ամՆ. ԺԲ. 17։ Յուդ. 9։
‡ Գլ. ԻԴ. 28։
‡ Յես. ԻԴ. 27։
‡ Գլ. ԻԸ. 18։
* ՅՁ՝ վկայութեան դէզ (Քաղդէարէն)։
† ՅՁ՝ վկայութեան դէզ (Եբրայեցերէն)։
‡ Յես. ԻԴ. 27։
‡ Դատ. ԺԱ. 29։ ԱԹագ. Է. 5։
‡ ՅՁ՝ դիտանոց։
‡ Գլ. ԺԴ. 5։
‡ Հմր 42։
‡ Գլ. ԻԱ. 23։

իր որդիները ու իր աղջիկները համ-
բուրեց , ու ‡օրհնեց զանոնք . և Լա-
բան ‡գնաց , ու իր տեղը դարձաւ ։

## ԳԼ. ԼԲ

1 Յակոբ Մանայիմի մէջ տեսիլք կը տեսնէ . 3 իր եղբօրը Եսաւին պատգամաւորներ կը խըր-կէ . 6 անոր գալէն կը վախնայ . 9 ազատութեան համար կ'աղօթէ . 13 Եսաւին ընծաներ կը խրկէ . 24 հրեշտակի մը հետ գօտեմարտութիւն ընելով Փանուելի մէջ , հոն Իսրայէլ կը կոչուի . 31 ու իր զստին վրայ կը կաղայ ։

1 Եւ Յակոբ իր ճամբան գնաց , ու
−Աստուծոյ հրեշտակները անոր
2 պատահեցան ։ Եւ Յակոբ երբոր
տեսաւ զանոնք , ըսաւ . Աս Աս-
տուծոյ ‡բանակն է . և ան տեղին
անունը ‖Մանայիմ դրաւ ։
3 Եւ Յակոբ իր առջեւէն պատգա-
մաւորներ խրկեց իր եղբօրը Եսաւին
‡դէպ 'ի Սէիր երկիրը՝ ‡Եդովմի գա-
4 ւառը . Եւ պատուիրեց անոնց՝ ը-
սելով . ‡Իմ տիրոջս Եսաւին ա-
սանկ ըսէք . Քու ծառադ Յակոբը
ասանկ կ'ըսէ . Լաբանին քովը պան-
դխտութիւն ըրի , ու մինչև հիմա
5 ուշացայ . ‡Եւ ունիմ արջառներ
ու էշեր , հօտեր ու ծառաներ և
աղախիններ . և խրկեցի իմ տիրոջս
իմացընելու , որ ‡քու առջեւդ
6 շնորհք գտնեմ ։ Եւ պատգամա-
ւորները դարձան Յակոբին՝ ու ըսին .
Քու եղբօրդ Եսաւին գացինք , ու
‡անիկայ ալ չորս հարիւր մարդով
քեզ դիմաւորելու կու գայ ։
7 Եւ Յակոբ խիստ վախցաւ ու
‡խռովեցաւ . և իր հետը եղած
ժողովուրդը , ու հօտերը , և ար-
ջառները , ու ուղտերը երկու
8 խումբի բաժնեց , Ու ըսաւ . Թէ որ
Եսաւ մէկ խումբին հասնի , ու ան
զարնելու ըլլայ , մէկալ խումբը
9 կ'ազատի ։ ‡Եւ Յակոբ ըսաւ . ‡Ո՛վ
իմ հօրս Աբրահամին Աստուածը ,
ու իմ հօրս Իսահակին Աստուածը ,
‡Ով Տէր՝ որ ըսիր ինծի . Քու եր-
կիրդ ու քու հայրենիքդ դարձիր ,
10 ու քեզի բարիք ընեմ . Արժանի
չեմ ան ամէն ‡ողորմութիւննե-
րուն և ամէն հաւատարմութեանը ,
որ դուն քու ծառայիդ ցուցուցիր .
ինչու որ ‡իմ գաւազանովս անցայ
աս Յորդանանէն , և հիմա երկու
11 խումբի տէր եղայ ։ Կ'աղաչեմ քե-
զի , ‡ազատէ զիս իմ եղբօրս Եսա-
ւին ձեռքէն . ինչու որ ես անկէ կը
վախնամ , որ չըլլայ թէ գայ ու
զարնէ զիս , ու ‡մայրը տղաքնե-
12 րովը ։ Եւ ‡դուն ըսիր թէ՝ Ան-
շուշտ քեզի բարիք պիտի ընեմ ,
ու քու սերունդդ ծովի աւազին
չափ պիտի ընեմ , որ շատութենէն
չհամրուիր ։
13 Եւ ան գիշերը հոն կեցաւ . ու իր

Ն. Ք. ԴՃ.
1739

‡ Գլ. ԻԸ. 1։
‡ Գլ. ԺԸ. 33։ Լ. 25։
− Սաղ. ՂԱ. 11։ Եբր. Ա. 14։
‡ Յես. Ե. 14։ Սաղ. ճդ. 21։ Ճխը. 2։ Ղու. Բ. 13։
‖ ՅՁ՝ երկու բանակներ։
‡ Գլ. ԼԳ. 14, 16։
‡ Գլ. ԼԶ. 6, 7, 8։ Բ Օր. Բ. 5։ Յես. ԻԴ. 4։
‡ Առակ. ԺԵ. 1։
‡ Գլ. Լ. 43։
‡ Գլ. ԼԳ. 8, 15։
‡ Գլ. ԼԳ. 1։
‡ Գլ. ԼԵ. 3։
‡ Սաղ. Ծ. 15։
‡ Գլ. ԻԸ. 13։
‡ Գլ. ԼԱ. 3, 13։
‡ Գլ. ԻԴ. 27։
‡ Յոբ. Ը. 7։
‡ Սաղ. ԾԹ. 1, 2։
‡ Ովս. Ժ. 14։
‡ Գլ. ԻԸ. 13, 14, 15։

Ն. Ք. Ղ. Ք.
1739

ձեռքը գտնուածէն իր եղբօրը Ե-
սաւին համար ընծաներ պատրաս-
14 տեց, Երկու հարիւր այծ և քսան
նոխազ, երկու հարիւր էգ ոչխար
15 և քսան խոյ, Երսուն ծիծ տուող
ուղտ իրենց ձագերովը, քառսուն
կով ու տասը ցուլ, քսան էգ էշ
16 և տասը աւանակ։ Եւ ամէն մէկ
հօտը զատ զատ իր ծառաներուն
ձեռքը յանձնեց, ու ըսաւ իր ծա-
ռաներուն. Առջե՛ս անցէք, ու հօ-
տերը իրարմէ քիչ մը հեռու թո-
17 ղուցէք։ Եւ առջեւէն գացողին
պատուիրեց՝ ըսելով. Երբոր իմ
եղբայրս Եսաւ քեզի պատահի, ու
քեզի հարցընէ, ըսելով թէ. Դուն
որո՞ւն ես, և ո՞ւր կ'երթաս, և աս
18 առջեւդ եղածները որո՞ւն են. Ան
ատենը ըսէ որ՝ Քու ծառայիդ Յա-
կոբինն է. իմ տիրոջս Եսաւին
խրկած ընծան է. և ահա ինքն ալ
19 ետեւնիս է։ Եւ այսպէս երկրոր-
դին, ու երրորդին, և հօտերուն
ետեւէն բոլոր գացողներուն պա-
տուիրեց՝ ըսելով. Աս խօսքին պէս
զրուցեցէք Եսաւին՝ երբոր զինքը
20 գտնէք. Եւ ահա քու ծառադ Յա-
կոբն ալ ետեւնիս է՝ ըսէք. քանզի
ըսաւ. [ե]Առջեւէս գացող ընծանե-
րով անոր երեսը կը կակուղցընեմ,
և անկէ ետքը անոր երեսը կը տես-
21 նեմ. գուցէ զիս ընդունի։ Այս-
պէս ընծաները անոր առջեւէն գա-
ցին. և ինքը ան գիշերը հոն մնաց
22 բանակին մէջ։ Եւ ան գիշերը ե-
լաւ, ու իր երկու կնիկները, և իր
երկու աղախինները, ու իր տասն-
ումէկ որդիները առաւ, [զ]և Յա-
23 բոկին անցքէն անցաւ։ Եւ առաւ
զանոնք, ու վտակէն անցուց, և իր
բոլոր ունեցածը անցուց։
24 Եւ Յակոբ մինակ մնաց, ու
[է]մարդ մը կը գօտեմարտէր անոր
25 հետ մինչև արշալոյս. Եւ երբ տե-
սաւ որ իր ուժը անոր չհասաւ, ա-
նոր զստին ամոլաջիլին դպաւ, և [ը]ա-
նոր հետ գօտեմարտած ատենը՝ Յա-
կոբին զստին ամոլաջիլը թմրեցաւ։
26 Եւ [թ]անիկայ ըսաւ. Թո՛ղ տուր զիս,
ինչու որ արշալոյսը *երևցաւ. և
Յակոբ ըսաւ. [ժ]Չեմ թողուր քեզ՝
27 մինչև որ զիս չօրհնես։ Եւ անիկայ
ըսաւ անոր. Ի՞նչ է անունդ. ան
28 ալ ըսաւ. Յակոբ է։ Եւ անիկայ
ըսաւ. [ի]Ալ մէյմըն ալ քու անունդ
Յակոբ չըսուի, հապա †Իսրայէլ
ըսուի. ինչու որ [լ]Աստուծոյ հետ
ու [խ]մարդոց հետ մարտնչեցար, և
29 յաղթեցիր։ Եւ Յակոբ հարցուց ու
ըսաւ. Շնո՛րհք ըրէ՝ անունդ ըսէ
ինծի։ Եւ անիկայ ըսաւ. [ծ]Ինչո՞ւ
իմ անունս կը հարցընես. և հոն
30 օրհնեց զանիկայ։ Եւ Յակոբ ան

[ե] Առակ. իա. 14։
[զ] Բ Օր. գ. 16։
[է] Ովս. ժբ. 3, 4։ Եփս. զ. 12։
[ը] Տե՛ս Մատ. իզ. 41։ Բ Կոր. ժբ. 7։
[թ] Տե՛ս Ղու. իդ. 28։
* Եբր. Ելաւ.
[ժ] Ովս. ժբ. 4։
[ի] Գլ. լե. 10։ դ Թագ. ժէ. 34։
† Տ՛ Աստուծոյ հետ մարտնչող։
[լ] Ովս. ժբ. 3, 4։
[խ] Գլ. իե. 31։ իէ. 33։
[ծ] Դատ. ժգ. 18։

տեղին անունը ‡Փանուէլ դրաւ.
քանզի ըսաւ. Դէմ առ դէմ [կ]տե-
սայ զԱստուած, ու իմ անձս ապ-
րեցաւ։
31 Եւ Փանուէլէն անցածին պէս՝
արեւը անոր վրայ ծագեցաւ. ու իր
32 զստին վրայ կը կաղար։ Անոր հա-
մար Իսրայէլի որդիքը զստին վրայի
‖թմրած ջիղը'' չեն ուտեր մինչև
այսօր. ինչու որ Յակոբին զստին
§թմրած ջիղին'' դպաւ։

Ն. Ք. Ղ. Ք.
1739

‡ Տ՛ Աստուծոյ երեսը։
[կ] Գլ. ժզ. 13։ Ել. իգ. 11։ լգ. 20։ բ Օր. ե. 24։ Դատ. զ. 22։ ժգ. 22։ Ես. զ. 5։
‖ Կամ՝ ամոլաջիլը
§ Կամ՝ ամոլաջիլին

## ԳԼ. ԼԳ

1 Յակոբ ու Եսաւ մէկզմէկու հանդիպելով իրա-
րու սէր կը ցուցընեն։ 17 Յակոբ Սոկքոթ
կ'երթայ։ 18 Սաղեմի մէջ դաշտ մը ծախու
առնելով՝ հոն սեղան մը կը շինէ, ու զանիկայ
Էլէլօհէ Իսրայէլ կ'անուանէ։

1 Եւ Յակոբ իր աչքերը վեր վերցուց՝
ու նայեցաւ, և ահա [ա]Եսաւ
կու գար՝ ու անոր հետը չորս հա-
րիւր հոգի ալ. և իր զաւակները
Լիային՝ ու Ռաքէլին՝ ու երկու
2 աղախիններուն բաժնեց։ Եւ աղա-
խինները իրենց զաւակներովը ա-
ռջեւը դրաւ, և Լիան իր զաւակնե-
րովը ետեւը, և Ռաքէլը ու Յովսէփը
3 ամենէն ետեւը։ Եւ ինքը անոնց
առջեւը անցաւ, ու մինչև իր եղ-
բօրը մօտենալուն, [բ]գետնին հա-
ւասար եօթը անգամ խոնարհու-
4 թիւն ըրաւ։ Ու [գ]Եսաւ զանիկայ
դիմաւորելու վազեց, ու գրկեց զա-
նիկայ, և [դ]անոր պարանոցին վրայ
ինկաւ, ու համբուրեց. և լացին։
5 Ու Եսաւ իր աչքերը վեր վերցուց,
ու տեսաւ կնիկները ու զաւակները,
և ըսաւ. Ասոնք քուկի՞դ ինչդ են.
և անիկայ ըսաւ. [ե]Աստուծոյ քու
ծառայիդ պարգեւած զաւակներն
6 են։ Ան ատենը աղախինները ու
անոնց զաւակները մօտեցան, ու
7 խոնարհութիւն ըրին։ Եւ Լիան
ալ ու իր զաւակները մօտեցան, ու
խոնարհութիւն ըրին. և ետքը
Յովսէփ ու Ռաքէլ մօտեցան, ու
8 խոնարհութիւն ըրին։ Ու Եսաւ
ըսաւ. Ա՛ս քու [զ]բոլոր խումբդ ի՞նչ
պիտի ըլլայ, որուն ես պատահեցայ.
և Յակոբ ըսաւ. [է]Իմ տիրոջս առջևը
9 շնորհք գտնելու համար է։ Ու Ե-
սաւ ըսաւ. Ես շատ ունիմ՝ եղբայր
10 իմ, քուկինդ քեզի ըլլայ։ Եւ
Յակոբ ըսաւ. Չէ, կ'աղաչեմ
քեզի՝ թէ որ հիմա քու առջեւդ
շնորհք գտայ, իմ ձեռքէս ընծաս
ընդունէ. ինչու որ [ը]քու երեսդ՝
Աստուծոյ երեսը տեսնելու պէս
11 տեսայ, և ինծի հաճեցար։ Շը-
նորհք ըրէ, քեզի բերուած *ըն-
ծաս ա՛ռ. քանզի Աստուած ողոր-
մեցաւ ինծի. և քանզի [թ]ես ամէն
բան ունիմ. [ժ]և ստիպեց անոր, ու
12 ան ալ ընդունեց։ Եւ անիկայ ը-

[ա] Գլ. լբ. 6։
[բ] Գլ. ժը. 2։ խբ. 6։ խգ. 26։
[գ] Գլ. լբ. 28։
[դ] Գլ. խե. 14, 15։
[ե] Գլ. խը. 9։ Սաղ. ճիէ. 3։ Ես. ը. 18։
[զ] Գլ. լբ. 16։
[է] Գլ. լբ. 5։
[ը] Գլ. խգ. 3։ բ Թագ. գ. 13։ ժդ. 24, 28, 32։ Մատ. ժը. 10։
* Եբր. օրհնութիւնս. տես Դատ. ա. 15։ ա Թագ. իե. 27։ լ. 26։ դ Թագ. ե. 15։
[թ] Փիլ. դ. 18։
[ժ] դ Թագ. ե. 23։

սաւ . Ելլենք երթանք . ու ես
13 քու առջևէդ կ'երթամ ։ Եւ Յակոբ
ըսաւ անոր . Իմ տէրս գիտէ որ
զաւակները մատղաշ են , ու հետս
եղած հօտերը ու արջառները ծա֊
գերով են . և թէ որ մէկ օր մը բռ֊
նութեամբ վարեն զանոնք , բոլոր
14 հօտերը պիտի մեռնին ։ Ուրեմն
թող իմ տէրս իր ծառային առ֊
ջե՛ն անցնի . ու ես կամաց կամաց
առջևս եղած անասուններուն ոտ֊
քովը ու տղաքներուն ոտքովը կ'եր֊
թամ , մինչև որ իմ տիրոջս [ա]Սէիր
15 հասնիմ ։ Եւ Եսաւ ըսաւ . Արդ՝
իմ հետս եղող ժողովուրդէն քու
քովդ ձգեմ . և անիկայ ըսաւ .
Ի՞նչ պէտք է . [բ]Թող իմ տիրոջս
16 առջևը շնորհք գտնեմ ։ Այսպէս
Եսաւ այն օրը իր ճամբան դարձաւ
դէպ 'ի Սէիր ։
17 Եւ Յակոբ [գ]Սոկքովթ չուեց . ու
իրեն տուն մը շինեց . և իր հօտե֊
րուն փարախներ շինեց . անոր հա֊
մար այն տեղին անունը *Սոկքովթ
ըսուեցաւ ։
18 Եւ Յակոբ Միջագետքէն դարձած
ատենը՝ [դ]Սիւքեմացւոց [ե]Սաղէմ
քաղաքը եկաւ , որ Քանանու երկ֊
րին մէջն է , և քաղաքին առջին
19 բանակեցաւ ։ Եւ իր վրանը կանգ֊
նած [զ]արտին կալուածքը Սիւքեմին
հօրը Եմովրին որդիներէն ծախու
առաւ †հարիւր կտոր ստակի" ։
20 Եւ հոն սեղան մը շինեց , ու [է]անունը
‡Էլէլօհէ Իսրայէլ" դրաւ ։

Ն. Ք. Գ. Ք. 1739

[ա] Գլ. ԼԲ. 3 ։
[բ] Գլ. ԼԴ. 11 ։ ԽԷ. 25 ։ Հռութ. Բ. 13 ։
[գ] Յես. ԺԳ. 27 ։ Դատ. Ը. 5 ։ Սաղ. Կ. 6 ։
* Եբ՝ փարախներ ։
[դ] Յես. ԻԴ. 1 ։ Դատ. Թ. 1 ։
[ե] Յօհ. Գ. 23 ։
[զ] Յես. ԻԴ. 32 ։ Յօհ. Դ. 5 ։
† Կամ՝ հարիւր գառնուկի ։
[է] Գլ. ԼԵ. 7 ։
‡ Եբ՝ Աստուած Իսրայէլի Աստուածը ։

## ԳԼ. ԼԴ

1 Դինա Սիւքեմէն կը պղծուի ։ 4 Սիւքեմ կ'աղաչէ որ իրեն կնիկ ըլլալու տան զանիկայ ։ 13 Յակոբին որդիքը Սիւքեմացիներուն թլփատուիլ կ'առաջարկեն ։ 20 Եմովր և Սիւքեմ իրենց քաղաքացիները թլփատուելու կը համոզեն ։ 25 Անոնց թլփատութենէն ետքը՝ Յակոբին որդիքը զանոնք կը ջարդեն , 27 ու անոնց քաղաքը կը կողոպտեն ։ 30 Յակոբ կը յանդիմանէ Շմաւոնը ու Ղևին ։

1 Եւ Լիային Յակոբին ծնած աղ֊
ջիկը [ա]Դինա՝ այն երկրին աղ֊
2 ջիկները [բ]տեսնելու ելաւ ։ Ու
այն երկրին իշխանը Խևացի Եմով֊
րին որդին Սիւքեմ [գ]տեսաւ զա֊
նիկայ , [դ]և առաւ ու պառկեցաւ
անոր հետ , ու [ե]պղծեց զա֊
3 նիկայ ։ Եւ անոր հոգին Յակո֊
բին Դինա աղջկանը յարեցաւ . ու
սիրեց աղջիկը , և [զ]աղջկան ‖քաղց֊
4 րութեամբ խօսեցաւ ։ Ու Սիւքեմ
[է]իր հօրը Եմովրին զրուցեց՝ ըսե֊
լով . Աս աղջիկը ինծի կնիկ առ ։
5 Եւ Յակոբ լսեց որ անիկայ իր Դի֊
նա աղջիկը պղծեց . բայց իր որդի֊
ները իր հօտերուն հետ դաշտն էին .
ու մինչև անոնց գալը Յակոբ [ը]լռու֊
կեցաւ ։
6 Եւ Սիւքեմին հայրը Եմովր գնաց

իբր 1732

[ա] Գլ. Լ. 21 ։
[բ] Տիտ. Բ. 5 ։
[գ] Գլ. Զ. 2 ։ Դատ. ԺԴ. 1 ։
[դ] Գլ. Ի. 2 ։
[ե] Բ Օր. ԻԲ. 29 ։
[զ] Տես Ես. Խ. 2 ։ Ովս. Բ. 14 ։
‖ Եբր՝ սրտին
[է] Դատ. ԺԴ. 2 ։
[ը] Թագ. Ժ. 27 ։ Բ Թագ. ԺԳ. 22 ։

Յակոբին . որ անոր հետ խօսի ։
7 Եւ Յակոբին որդիները լսածնուն
պէս՝ դաշտէն եկան . և մարդիկը
դժուարեցան , ու [թ]խիստ բարկա֊
ցան . ինչու որ Յակոբին աղջկանը
հետ պառկելով՝ [ժ]Իսրայէլին մէջ
անզգամութիւն ըրաւ , [ի]որ ասանկ
8 ըլլալու չէր ։ Ու Եմովր խօսեցաւ
անոնց հետ՝ ըսելով . Իմ Սիւքեմ
որդւոյս հոգին ձեր աղջկանը սիրա֊
հարեցաւ . կ'աղաչեմ ձեզի , զանի֊
9 կայ անոր կնութեան տուէք . Եւ
մեզի հետ խնամութիւն ըրէք . ձեր
աղջիկները մեզի՛ տուէք , ու մեր
10 աղջիկները ձեզի առէք . Եւ մեզի
հետ բնակեցէ՛ք . ու [լ]աս երկիրը
ձեր առջևը պիտի ըլլայ . անոր մէջ
բնակեցէ՛ք [խ]ու առուտուր ըրէք , և
[ծ]անոր մէջ կալուածքներ ստացէք .
11 Ու Սիւքեմ ըսաւ աղջկանը հօրը ,
ու անոր եղբայրներուն . Թող ձեր
առջևը շնորհք գտնեմ . և ինչ որ
12 ինծի ըսէք . կու տամ ։ Խնդրե֊
ցէ՛ք [կ]ինծմէ խիստ շատ օժիտ ու
ընծայ . ու ինծի ըսածնուդ պէս
պիտի տամ . միայն թէ աղջիկը
ինծի տուէք՝ կնիկ ըլլալու համար ։
13 Եւ Յակոբին որդիքը [հ]խաբէու֊
թեամբ պատասխան տուին Սիւ֊
քեմին՝ ու անոր հօրը Եմովրին , ու
ըսին , (քանզի անիկայ իրենց Դի֊
14 նա քոյրը պղծեց ,) Եւ ըսին ա֊
նոնց . Մենք աս բանը չենք կրնար
ընել , որ մեր քոյրը անթլփատ մար֊
դու մը տանք . ինչու որ [ձ]աս մեզի
15 ամօթ բան մըն է . Բայց միայն ա֊
սով կը հաճինք ձեզի , թէ որ ձեզ֊
մէ ամէն արու թլփատուելով՝ մե֊
16 զի պէս ըլլաք , Այն ատենը մեր աղ֊
ջիկները ձեզի կու տանք , և ձեր
աղջիկները մեզի կ'առնենք , ու ձե֊
զի հետ կը բնակինք , ու ձեզի հետ
17 մէկ ժողովուրդ կ'ըլլանք ։ Բայց
թէ որ մեզի մտիկ չընելով՝ չթլփա֊
տուիք , այն ատենը մենք մեր աղ֊
18 ջիկը կ'առնենք ու կ'երթանք ։ Եւ
անոնց խօսքը հաճելի եղաւ Եմով֊
րին . ու Եմովրի որդւոյն Սիւքե֊
19 մին ։ Եւ այն պատանին աս բանը
ընելու չուշացաւ . քանզի Յակոբին
աղջկանը զմայլած էր . և իր հօրը
տանը մէջ եղողներուն [ղ]ամենէն
պատուականն էր անիկայ ։
20 Ու Եմովր և անոր որդին Սիւքեմ
իրենց քաղաքին դուռը եկան , ու
իրենց քաղաքին մարդոցը հետ խօ֊
21 սեցան՝ ըսելով . Աս մարդիկը խա֊
ղաղութեամբ կը վարուին մեզի
հետ . ուստի թող աս երկրին մէջ
բնակին ու անոր մէջ առուտուր
ընեն . ինչու որ ահա երկիրը ընդ֊
արձակ է անոնց առջևը . Եկէ՛ք՝
անոնց աղջիկները մեզի կնիկներ

Ն. Ք. Գ. Ք. իբր 1732

[թ] Գլ. ԽԹ. 7 ։ Բ Թագ. ԺԳ. 21 ։
[ժ] Յես. Է. 15 ։ Դատ. Ի. 6 ։
[ի] Բ Օր. ԻԳ. 17 ։ Բ Թագ. ԺԳ. 12 ։
[լ] Գլ. ԺԳ. 9 ։ Ի. 15 ։
[խ] Գլ. ԽԲ. 34 ։
[ծ] Գլ. ԽԷ. 27 ։
[կ] Ել. ԻԲ. 16 ։ 17 ։ Բ Օր. ԻԲ. 29 ։ Ա Թագ. ԺԸ. 25 ։
[հ] Տես Բ Թագ. ԺԳ. 24 , &c. ։
[ձ] Յես. Ե. 9 ։
[ղ] Սաղմ. Դ. 9 ։

Ն. Ք. ԶՔ. Իբր 1732

առնենք , և մեր աղջիկները անոնց
22 տանք ։ Բայց այն մարդիկը մեզի
հետ բնակելու , մէկ ժողովուրդ ըլ-
լալու համար միայն աս բանով կը
հաճին մեզի , որ անոնց թլփատուե-
լուն պէս՝ մեր ամէն արուն թլփա-
23 տուի ։ Անոնց հօտերը , ու անոնց
ստացուածքը , և ամէն անասուն-
ները մերը չե՞ն ըլլար , միայն թէ
մենք անոնց հաճինք , որ մեզի հետ
24 բնակին ։ Ու Եմովրին և անոր
որդւոյն Սիւքեմին մտիկ ըրին այն
ամէնը՝ որ անոր քաղաքին դռնէն
դուրս կ'ելլէին . և ամէն արու՝ որ
անոր քաղաքին դռնէն դուրս կ'ել-
լէր , թլփատուեցաւ ։
25 Ու եղաւ որ երրորդ օրը երբոր ա-
նոնք ցաւին մէջն էին , Յակոբին
երկու որդիքը Շմաւոն ու Ղևի՝
Դինային եղբայրները՝ ամէն մէկը իր
սուրը առաւ , և համարձակ քա-
ղաքը մտան , ու սպաննեցին ամէն
26 արուն . Ու Եմովրը և անոր որ-
դին Սիւքեմը սուրի բերնէ անցու-
ցին . և Սիւքեմին տունէն առին
27 Դինան , ու դուրս ելան ։ Եւ
Յակոբին որդիքը սպաննուածնե-
րուն վրայ եկան , ու քաղաքը
կողոպտեցին , իրենց քոյրը պղծել-
28 նուն համար . Անոնց հօտերը ,
ու անոնց արջառները , ու էշերը ,
և քաղաքին մէջ եղածը , ու դաշ-
29 տին մէջ եղածը առին . Եւ անոնց
բոլոր ստացուածքը ու անոնց բոլոր
տղաքները ու կնիկները գերի առին ,
և տուներուն մէջ բոլոր գտնուածը
30 կողոպտեցին ։ Եւ Յակոբ ըսաւ
Շմաւոնին ու Ղևիին . Զիս աս
երկրին բնակչացը՝ Քանանացւոց ու
Փերեզացւոց մէջը * ատելի ընելով՝
զիս փորձանքի մէջ ձգեցիք . և ին-
ծի հետ քիչ մարդիկ ըլլալով՝ անոնք
իմ վրաս պիտի հաւաքուին , ու զիս
պիտի զարնեն , և ես ու իմ տունս
31 պիտի կորսուինք ։ Ու անոնք ըսին .
Հապա մեր քոյրը բոզի պէս գործա-
ծել պէ՞տք էր անոր ։

## ԳԼ. ԼԵ

1 Աստուած Յակոբը Բեթէլ կը խրկէ ։ 2 Յակոբ իր տունը կուռքերէն կը մաքրէ . 6 Բեթելի մէջ սեղան կը շինէ ։ 8 Դեբորայի մահը ։ 9 Աստուած Բեթելի մէջ կ'օրհնէ Յակոբը ։ 16 Ռաքէլ՝ Բենիամինը կը ծնանի , ու Եփրաթային ճամբան կը մեռնի ։ 22 Ռուբէն՝ Բաղղային հետ կը ննջէ ։ 23 Յակոբի որդիքը ։ 27 Յակոբ Քեբրոն կու գայ իր Իսահակ հօրը ։ 28 Իսահակին կենացը օրերը , մահը , ու թաղումը ։

1 Եւ Աստուած ըսաւ Յակոբին .
Ելի՛ր՝ վեր դէպ 'ի Բեթէլ
գնա , ու հոն բնակէ , և հոն սեղան
մը շինէ Աստուծոյ՝ որ քեզի ե-
րևցաւ , քու եղբօրդ Եսաւին երե-
2 սէն փախած ատենդ ։ Եւ Յակոբ
իր ընտանիքին ու բոլոր իրեն հետ
եղողներուն ըսաւ . Ձեր մէջը եղող
օտար աստուածները վերցուցէ՛ք ,
ու մաքրուեցէ՛ք , և հանդերձնիդ
3 փոխեցէ՛ք . Ու ելլելով դէպ 'ի Բե-
թէլ վեր երթանք . ու հոն սեղան
մը շինեմ Աստուծոյ , որ իմ նե-
ղութեանս օրը ինծի լսեց , ու իմ
գացած ճամբուս մէջ ինծի հետ էր ։
4 Եւ իրենց ձեռքը եղած բոլոր օտար
աստուածները , ու իրենց ականջ-
ները եղած օղերը Յակոբին տուին .
և Յակոբ թաղեց զանոնք Սիւքեմի
5 մօտ եղած բևեկնիին տակը ։ Ու
ճամբայ ելան . և իրենց բոլորտիքը
եղած քաղաքներուն վրայ Աստու-
ծոյ վախը ինկաւ , ու Յակոբին
6 որդւոցը ետևէն չինկան ։ Եւ Յա-
կոբ Քանանու երկրին մէջ եղող
Լուզը՝ այսինքն Բեթէլը եկաւ ,
ինքը ու իր հետը եղող բոլոր ժո-
7 ղովուրդը . Եւ հոն սեղան մը շի-
նեց , ու այն տեղին անունը † Էլ
Բեթէլ դրաւ . քանզի իր եղբօրը
երեսէն փախած ատենը՝ Աստուած
հոն իրեն երևցեր էր ։
8 Եւ Ռեբեկային դայեակը Դեբո-
րան մեռաւ , ու Բեթէլին վարի
կողմը կաղնիին տակը թաղուեցաւ .
ու անոր անունը ‡ Ալոնպախութ
դրուեցաւ ։
9 Եւ Աստուած նորէն երևցաւ
Յակոբին՝ երբոր անիկայ Միջագե-
տքէն դարձեր էր , ու օրհնեց զանի-
10 կայ ։ Եւ Աստուած ըսաւ անոր .
Քու անունդ Յակոբ է . այլ մէյմըն
ալ քու անունդ Յակոբ չըսուի ,
հապա Իսրայէլ ըլլայ քու անունդ .
ու անոր անունը Իսրայէլ դրաւ ։
11 Եւ Աստուած ըսաւ անոր . Ես Ա-
մենակարող Աստուած եմ . աճի՛ս
ու շատնաս . քեզմէ ազգ՝ ու ազ-
գերու բազմութիւն ըլլայ , և քու
12 երանքէդ թագաւորներ ելլեն ։ Ու
այն երկիրը որ Աբրահամին և Իսա-
հակին տուի , քեզի պիտի տամ .
ու քեզմէ՛ ետքը քու սերունդիդ
13 պիտի տամ այն երկիրը ։ Եւ Աս-
տուած այն տեղը՝ ուր որ անոր հետ
խօսեցաւ , անոր քովէն վեր ելաւ ։
14 Ու Յակոբ քարէ արձան մը կանգ-
նեց այն տեղը՝ ուր որ Աստուած իր
հետը խօսեցաւ . և անոր վրան
թափելու նուէր մատուց , ու անոր
15 վրան եղ թափեց ։ Եւ Յակոբ այն
տեղին անունը՝ ուր որ Աստուած
իր հետը խօսեցաւ , Բեթէլ դրաւ ։
16 Ու Բեթելէն ճամբայ ելան , ու
դեռ Եփրաթա չեկած քիչ մը ճամ-
բայ մնալով՝ Ռաքէլ ծնաւ , և ծը-
նած ատենը շատ դժուարութիւն
17 քաշեց ։ Ու եղաւ որ երբ իր ծը-
նանելուն շատ դժուարութիւն կը

Ն. Ք. ԶՔ. Իբր 1732

Գլ. իգ. 10 ։
Գլ. խթ. 5 , 6 , 7 ։
Եւ. ե. 21 ; Ա Թագ. ժգ. 4 ։
* Եբր. գարշահոտ
Բ Օր. դ. 27 ; Սաղ. ճե. 12 ։
Գլ. իը. 19 ։
Գլ. իը. 13 ։
Գլ. իէ. 43 ։
Գլ. ժը. 19 ; Յես. իդ. 15 ։
Գլ. լա. 19, 34 ; Յես. իդ. 2 , 23 ; Ա Թագ. է. 3 ։
Ել. ժթ. 10 ։
Գլ. լբ. 7 , 24 ; Սաղ. ճէ. 6 ։
Գլ. իը. 20 ; լա. 3 , 42 ։
Ովս. բ. 13 ։
Յես. իդ. 26 ; Դատ. թ. 6 ։
Ել. ժե. 16 ; իգ. 27 ; Լդ. 24 ; Բ Օր. ժա. 25 ; Յես. բ. 9 ; ե. 1 ; Ա Թագ. ժդ. 15 ; Բ Մն. ժդ. 14 ։
Գլ. իը. 19 , 22 ։
Ծող. ե. 4 ։
† Այսինքն՝ Բեթելին Աստուածը ։
Գլ. իը. 13 ։
Գլ. իդ. 59 ։
‡ Այսինքն՝ կաղնի սգոյ ։
Ովս. ժբ. 4 ։
Գլ. ժէ. 5 ։
Գլ. լբ. 28 ։
Գլ. ժէ. 1 ; խը. 3 , 4 ; Ել. զ. 3 ։
Գլ. ժէ. 5 , 6 , 16 ; իը. 3 ; խը. 4 ։
Գլ. ժբ. 7 ; ժգ. 15 ; իշ. 3 , 4 ; իը. 13 ։
Գլ. ժէ. 22 ։
Գլ. իը. 18 ։
Գլ. իը. 19 ։

Ն. Ք. զՔ.
Իբր 1729
ե Գլ. լ. 24. Ա Թագ. դ. 20.
Իբր 1729
* Այսինքն՝ Նեղութեանս որդին.
† Այսինքն՝ աջ ձեռքին որդին.
դ Գլ. խը. 7.
ե Հռութ. ա. 2. դ. 11. Միք. ե. 2. Մատ. բ. 6.
զ Ա Թագ. ժ. 2. Բ Թագ. ժը. 18.
է Միք. դ. 8.
ը Գլ. խթ. 4. Ա Մն. ե. 1. Տե՛ս Բ Թագ. ժզ. 22. ի. 3. Ա Կոր. ե. 1.
թ Գլ. խզ. 8. Ել. ա. 2.
ժ Գլ. ժգ. 18. իգ. 2, 19.
ի Յեսու. ժդ. 15. ժե. 13.
1716
լ Գլ. ժե. 15. իե. 8.
խ Տե՛ս Գլ. իե. 9. խթ. 31.

քաշէր, ծնուցիչը ըսաւ անոր. Մի՛
վախնար. ինչու որ նաս ալ քեզի
18 որդի է ։ Եւ եղաւ որ երբ անոր
հոգին կ'ելլէր, (քանզի մեռաւ,)
անոր անունը *Բենօնի դրաւ. բայց
անոր հայրը՝ †Բենիամին կոչեց զա-
19 նիկայ ։ Եւ Ռաքէլ մեռաւ, ու
թաղուեցաւ Եփրաթային ճամ-
20 բան՝ որ Բեթլէհէմն է ։ Եւ Յակոբ
անոր գերեզմանին վրայ արձան մը
կանգնեց, որ մինչև այսօր Ռաքէ-
լին գերեզմանին արձանն է ։
21 Ու Իսրայէլ ճամբայ ելաւ, և իր
վրանը Եդերի աշտարակին մէկալ
22 կողմը կանգնեց ։ Ու եղաւ որ՝
երբոր Իսրայէլ այն երկիրը կը բը-
նակէր, Ռուբէն գնաց՝ Նու իր հօ-
րը Բաղղա հարճին հետ պառկե-
ցաւ. և Իսրայէլը լսեց ։
Արդ՝ Յակոբին որդիքը տաս-
23 ներկու էին ։ Լիային որդիքը՝
Յակոբին անդրանիկը Ռուբէն,
Շմաւոն, Ղևի, Յուդա, Իսաքար
24 ու Զաբուղոն. Ռաքէլին որդիքը՝
25 Յովսէփ ու Բենիամին. Եւ Ռա-
քէլին Բաղղա աղախինին որդիքը՝
26 Դան ու Նեփթաղիմ ։ Եւ Լիա-
յին Զելփա աղախինին որդիքը՝
Գադ ու Ասեր ։ Ասոնք են Յակո-
բին որդիքը, որոնք Միջագետի
մէջ ծնան անոր ։
27 Եւ Յակոբ եկաւ իր հօրը Իսա-
հակին դէպ'ի Մամբրէ՝ Արբայի
քաղաքը՝ այսինքն Քեբրոն, ուր որ
Աբրահամ ու Իսահակ պանդխը-
28 տութեամբ բնակեցան ։ Եւ Իսա-
հակին օրերը հարիւր ութսուն
29 տարի եղաւ ։ Եւ Իսահակ ծերա-
ցած ու օրերը լեցուած՝ աւանդեց
հոգին ու մեռաւ, և իր ժողո-
վուրդին խառնուեցաւ. ու անոր
որդիքը Եսաւ ու Յակոբ թաղեցին
զանիկայ ։

## ԳԼ. ԼԶ.

1 Եսաւին իրեք կնիկները. 6 ու Սէիր լեռը երթալը ։ 9 Անոր որդիքը. 15 և անոնցմէ ելած իշխանները ։ 20 Սէիրի որդիքը ու իշխանները ։ 31 Եդովմի թագաւորները ։ 40 Եսաւէն ելած իշխանները ։

Իբր 1796
ա Գլ. իե. 30.
բ Գլ. իզ. 34.
գ Հմր 25.
Իբր 1760
դ Գլ. իը. 9.
ե Ա Մն. ա. 35.

1 Ասոնք են Եսաւին ծնունդնե-
2 րը՝ որ է Եդովմ ։ Եսաւ ի-
րեն կնիկներ առաւ Քանանու աղ-
ջիկներէն, Քետացի Ելոնին աղջի-
կը Ադդան, ու Խևացի Սեբեգոնին
աղջկանը Անային աղջիկը Ողի-
3 բաման, Եւ Իսմայէլին աղջիկը՝
Նաբէօթին քոյրը Բասեմաթը ։
4 Եւ Ադդա ծնաւ Եսաւին՝ Եղի-
փազը, ու Բասեմաթ ծնաւ Ռա-
5 գուէլը, Եւ Ողիբամա ծնաւ Յե-
ուսը ու Յեգղոմը և Կորխը. ասոնք
են Եսաւին որդիքը՝ որ ծնան իրեն՝
Քանանու երկրին մէջ ։

6 Ու Եսաւ առաւ իր կնիկները ու
տղաքները և աղջիկները ու իր տա-
նը բոլոր մարդիկը՝ և իր հօտերը ու
իր բոլոր անասունները՝ և իր բոլոր
ստացուածքը՝ որ Քանանու երկրին
մէջ ստացաւ, և իր եղբօրը Յա-
կոբին երեսէն ուրիշ երկիր մը գը-
7 նաց. Ինչու որ իրենց ստացուած-
քը շատ ըլլալուն համար՝ չէին
կրնար մէկտեղ բնակիլ. և իրենց
հօտերուն պատճառովը՝ իրենց
պանդխտութեամբ բնակած երկիրը
8 բաւական չէր իրենց ։ Ու Եսաւ
Սէիր լեռը բնակեցաւ. Եսաւը՝
Եդովմն է ։
9 Եւ Սէիր լեռը եղող Եդովմայե-
ցւոց հօրը Եսաւին ծնունդները ա-
10 սոնք են ։ Եսաւի որդւոցը անուն-
ները ասոնք են. Եսաւին կնկանը
Ադդային որդին Եղիփազ, ու
Եսաւին կնկանը Բասեմաթին որ-
11 դին Ռագուէլ ։ Եւ Եղիփազին
որդիքը՝ Թեման, Օմար, Սեփո,
12 և Գոթամ ու Կենէզ էին ։ Եւ
Թամնա՝ Եսաւին որդւոյն Եղիփա-
զին հարճն էր, որ Եղիփազին՝ Ա-
մաղէկը ծնաւ. Եսաւին կնկանը
13 Ադդային որդիքը ասոնք էին ։ Եւ
Ռագուէլին որդիքը ասոնք են.
Նահաթ, Զարա, Սամմա ու Մէ-
զա. ասոնք էին Եսաւին կնկանը
14 Բասեմաթին որդիքը ։ Ու Եսաւին
կնկանը Սեբեգոնի աղջկանը Անայի
աղջկանը Ողիբամային որդիքը ա-
սոնք են. և ծնաւ Եսաւին՝ Յեու-
սը, ու Յեգղոմը և Կորխը ։
15 Եսաւի որդւոցմէ եղող իշխան-
ները ասոնք են. Եսաւին անդրան-
կանը Եղիփազին որդիքը՝ Թեման
իշխան, Օմար իշխան, Սեփո իշ-
16 խան, Կենէզ իշխան, Կորխ իշ-
խան, Գոթամ իշխան, Ամաղէկ
իշխան. Եդովմի երկրին մէջ Եղի-
փազէն եղող իշխանները ասոնք
են. ասոնք Ադդայի որդիքն էին ։
17 Ու Եսաւին որդւոյն Ռագուէլին
որդիքը ասոնք են. Նահաթ իշ-
խան, Զարա իշխան, Սամմա իշ-
խան, Մէզա իշխան. Եդովմի երկ-
րին մէջ Ռագուէլէն եղող իշխան-
ները ասոնք են. Եսաւին կնկանը
Բասեմաթին որդիքը ասոնք է-
18 ին ։ Ու Եսաւին կնկանը Ողի-
բամային որդիքը ասոնք են. Յե-
ուս իշխան, Յեգղոմ իշխան,
Կորխ իշխան. Եսաւին կնոջմէն՝
Անային աղջիկը եղող Ողիբամայէն
19 ծնած իշխանները ասոնք էին ։ Ա-
սոնք են Եսաւին՝ այսինքն Եդովմին
որդիները, և ասոնք են անոնց իշ-
խանները ։
20 Եւ այն երկրին մէջ բնակող
Քոռեցի Սէիրին որդիքը ասոնք

Ն. Ք. զՔ.
Իբր 1740
զ Գլ. ժգ. 6, 11.
է Գլ. ժէ. 8. իը. 4.
ը Գլ. լբ. 3. Բ Օր. բ. 5. Յես. իդ. 4.
թ Հմր 1.
ժ Ա Մն. ա. 35, [illegible]
ժա Ել. ժէ. 8. 14. Թուոց իդ. 20. Ա Թագ. ժե. 2, 3, [illegible]
Իբր 1715
ժբ Գլ. ժդ. 6. Բ Օր. բ. 12, 22.
Իբր 1840
ժգ Ա Մն. ա. 38.

Ն. Ք. Գ. Ք. իբր 1840

են . Ղոտան , և Սոբաղ , ու Սե-
21 բեգօն , և Անա , Ու Դիշօն , ու Ե-
սեր և Դիշան . ասոնք էին Քոռե-
ցւոց իշխանները Սէիրի որդիքը Ե-
22 դովմի երկրին մէջ ։ Եւ Ղոտանին
որդիքը՝ Քոռի ու Հեմամ էին , ու
23 Ղոտանին քոյրը Թամնա ։ Եւ Սո-
բաղին որդիքը ասոնք են . Գաղու-
ան , ու Մանաքաթ , և Գեբաղ ,
24 Սեփո ու Օնամ ։ Եւ Սեբեգօնին
որդիքը ասոնք են . Այիա ու Անա .
աս այն Անան է , որ իր հօրը Սեբե-
գօնին էշերը արածած ատենը՝ ա-
նապատին մէջ ջերմուկները գտաւ ։
25 Եւ Անային որդիքը ասոնք են .
Դիսօն , ու Անային աղջիկը Ողիբա-
26 մա ։ Եւ Դիսօնին որդիքը ասոնք
են . Ամադան , ու Եսբան , և
27 Յեթրան ու Քառան ։ Եսերին
որդիքը ասոնք են . Բաղհան , ու
28 Զաաւան և Ական ։ Դիսանին
որդիքը ասոնք են . Հուս ու Ա-
29 ռան ։ Քոռեցւոց իշխանները ա-
սոնք են . Ղոտան իշխան , Սոբաղ
իշխան , Սեբեգօն իշխան , Անա իշ-
30 խան , Դիսօն իշխան , Եսեր իշխան ,
Դիսան իշխան . ասոնք են Քոռե-
ցւոց իշխանները Սէիրի երկրին
մէջ՝ իրենց իշխանութեանը [illegible]
համեմատ ։

իբր 1780

31 Եւ ծ ասոնք են այն թագաւոր-
ները՝ որ Եդովմի երկրին մէջ թա-
գաւորեցին , Իսրայէլի որդւոցը վրայ
թագաւոր մը թագաւորելէն ա-
32 ռաջ ։ Եւ Բէովրին որդին Բաղան
թագաւորեց Եդովմի մէջ . ու ա-
նոր քաղաքին անունը Դեննաբա
33 էր ։ Եւ Բաղան մեռաւ , ու անոր
տեղը Բօսրացի Զարային որդին
34 Յոբաբը թագաւորեց ։ Եւ Յոբաբը
մեռաւ , ու անոր տեղը Թեմանա-
ցւոց երկրէն Հուսամը թագաւո-
35 րեց ։ Եւ Հուսամը մեռաւ , ու
անոր տեղը Բադադին որդին Ադա-
դը թագաւորեց , որ Մովաբի դաշ-
տին մէջ Մադիանացիները կոտո-
րեց . և անոր քաղաքին անունը
36 Աւիթ էր ։ Եւ Ադադը մեռաւ ,
ու անոր տեղը Մասրեկացի Սա-
37 մաղան թագաւորեց ։ Եւ Սամա-
ղան մեռաւ , ու անոր տեղը Գետին
քովը Ռոոբովթէն եղող Սաւուղը
38 թագաւորեց ։ Եւ Սաւուղը մե-
ռաւ , ու անոր տեղը Աքոբորին որ-
դին Բաաղանանը թագաւորեց ։
39 Եւ Աքոբորին որդին Բաաղանանը
մեռաւ , ու անոր տեղը է Ադարը
թագաւորեց . և անոր քաղաքին
անունը Փոգոր էր . ու անոր կըն-
կանը անունը Մեհեաբէէլ էր , որ
Մեզաաբին աղջկանը Մատրեթին
աղջիկն էր ։
40 Եւ իրենց տոհմերուն՝ ու իրենց

իբր 1676
ծ Ա Մն. ա. 43 ։
է Ա Մն. ա. 50 ։
իբր 1496

Ն. Ք. Գ. Ք. իբր 1496

տեղերուն համեմատ իրենց անուն-
ներովը՝ Եսաւէն եղած Հ իշխաննե-
րուն անունները ասոնք են . Թամնա
իշխան , Գաղուա իշխան , Յեթաթ
41 իշխան , Ողիբամա իշխան , Էլա իշ-
42 խան , Փինօն իշխան , Կենէզ իշ-
խան , Թեման իշխան , Մաբզար
43 իշխան , Մագեդիէլ իշխան , Իրամ
իշխան ։ Ասոնք են Եդովմի իշխան-
ները իրենց բնակութեանը համե-
մատ՝ իրենց ստացուածքին երկրին
մէջ . աս է Եսաւ Եդովմայեցւոց
հայրը ։

Հ Ա Մն. ա. 51 ։

## ԳԼ. ԼԷ

1 Յովսէփին եղբայրները զինքը կ'ատեն ։ 5 Իր երկու երազները ։ 13 Յակոբ կը ղրկէ Յովսէփը որ իր եղբայրները տեսնէ ։ 18 Իր եղբայրները զանիկայ մեռցնելու կը միաբանին ։ 21 Ռուբէն զանիկայ կ'ազատէ ։ 26 Յովսէփ Իսմայէլացիներուն կը ծախուի ․ 31 ու Յակոբ անոր արիւնոտ պատմուճանէն խաբուելով՝ սուգ կը բռնէ ։ 36 Յովսէփ՝ Եգիպտոսի մէջ Պետափրեսին կը ծախուի ։

1 Եւ Յակոբ ա իր հօրը պանդխտա-
ցած երկրին՝ Քանանու երկրին
2 մէջ բնակեցաւ ։ Ասոնք են Յա-
կոբին ծնունդները . Յովսէփ տասն-
ուեօթը տարեկան էր , երբոր իր
եղբայրներուն հետ հօտերը կ'արա-
ծէր , և պատանի ըլլալով՝ իր հօրը
կիններուն Բաղղային որդիներուն
հետ ու Զեղփային որդիներուն հետ
էր . և Յովսէփ բ անոնց չար լուրը
3 անոնց հօրը կը բերէր ։ Եւ Իսրայէլ
իր բոլոր որդիներէն աւելի կը սիրէր
Յովսէփը . ինչու որ գ իր ծերու-
թեանը որդին էր անիկայ . և բազ-
մագոյն պատմուճան մը շինեց ա-
4 նոր ։ Եւ անոր եղբայրները տեսնե-
լով որ իրենց հայրը կը սիրէ զանի-
կայ իր բոլոր եղբայրներէն աւելի ,
դ ատեցին զանիկայ , ու խաղաղու-
թեամբ չէին կրնար խօսիլ անոր
հետ ։
5 Եւ Յովսէփ երազ մը տեսաւ , ու
իր եղբայրներուն պատմեց . և ա-
6 նոնք աւելի ատեցին զանիկայ ։ Ու
ըսաւ անոնց . Կ'աղաչեմ ձեզի ,
մտիկ ըրէք աս իմ տեսած երազս .
7 ե Ահա մենք դաշտին մէջ որաներ կը
կապէինք , և ահա իմ որաս ելաւ ,
ու շիտակ կանգնեցաւ . և ահա ձեր
որաները անոր բոլորտիքը կայնե-
ցան , ու իմ որայիս երկրպագու-
8 թիւն ըրին ։ Եւ անոր եղբայրնե-
րը ըսին անոր . Իրաւցընէ մեր
վրայ պիտի թագաւորե՞ս , կամ ի-
րաւցընէ մեր վրայ պիտի տիրե՞ս .
և անոր երազներուն ու խօսքերուն
համար աւելի ատեցին զանիկայ ։
9 Եւ ուրիշ երազ մըն ալ տեսաւ , ու
զանիկայ իր եղբայրներուն պատ-
մեց , ու ըսաւ . Ահա երազ մըն ալ
տեսայ , և ահա Հարեւը ու լուսինը՝

ա Գլ. ժէ. 8 ; իգ. 4 ; իը. 4 ; լզ. 7 ; Եբր. ժա. 9 ։
1729
բ Ա Թագ. բ. 22, 23, 24 ։
գ Գլ. խդ. 20 ։
դ Գլ. իէ. 41 ; խթ. 23 ։
ե Գլ. խբ. 6, 9 ; խգ. 26 ; խդ. 14 ։
զ Տես Գլ. խզ. 29 ։

Ն. Ք. ԶՔ.
1729

ա Գլ. ԻԵ. 29։
բ Գոր. Է. 9։
Գ Դան. Է. 28։ Ղու. Բ. 19, 51։

Իբր 1729

գ Գլ. ԻԹ. 6։
դ Գլ. ԼԵ. 27։
ե Երգ. Ա. 7։
զ 2 Թագ. Զ. 13։
է Առակ. Ա. 11, 16։ Զ. 17։ ԻԵ. 4։
Ը Թագ. ԺԹ. 1։ Սաղ. ԼԱ. 13։ ԼԷ. 12, 32։ ՂԴ. 21։ Մատ. ԻԷ. 1։ Մար. ԺԴ. 1։ Յովհ. ԺԱ. 53։ Գոր. ԻԳ. 12։
* Եբր. երազներու տէրը
թ Գլ. ԽԲ. 22։
ի Առակ. Լ. 20։ Ամով. Զ. 6։

ու տասնումէկ աստղեր ինծի եր-
10 կրպագութիւն ըրին ։ Եւ իր հօրը
ու իր եղբայրներուն պատմեց . և իր
հայրը յանդիմանեց զանիկայ . ու
ըսաւ անոր . Ի՞նչ է աս քու տե-
սած երազդ . միթէ ես ու քու
մայրդ և քու ա եղբայրներդ իրաւ-
ցընե՞ պիտի գանք՝ մինչև գետինը
11 քեզի խոնարհութիւն ընելու ։ Ու
բ եղբայրները նախանձեցան անոր .
բայց հայրը Գ էս խօսքը պահեց աս
խօսքը ։
12 Եւ անոր եղբայրները գացին՝ որ
իրենց հօրը հօտերը Սիւքեմի մէջ
13 արածեն ։ Եւ Իսրայէլ ըսաւ Յով-
սէփին . Քու եղբայրներդ Սիւքեմի
մէջ չե՞ն արածեր ոչխարները . եկո՛ւր
ես քեզ անոնց խրկեմ . ու անիկայ
14 ըսաւ . Ահա՛ ես հոս եմ ։ Եւ ըսաւ
անոր . Գնա՛ նայէ թէ քու եղբայր-
ներդ գ ողջ առո՞ղջ են , և հօտերը
ողջ են , ու ինծի լուր մը բեր .
այսպէս խրկեց զանիկայ դ Քեբրոնի
հովիտէն . և ան ալ Սիւքեմ եկաւ ։
15 Եւ մարդ մը գտաւ զանիկայ , որ
դաշտին մէջը աստին անդին կը
պտըտէր . և ան մարդը հարցուց
անոր ըսելով . Ի՞նչ կը փնտռես ,
16 Եւ անիկայ ըսաւ . Իմ եղբայրներս
կը փնտռեմ . կ'աղաչեմ՝ ե ըսէ ին-
17 ծի , անոնք ո՞ւր կ'արածեն ։ Եւ ան
մարդը ըսաւ . Ասկէ ելան . քան-
զի լսեցի որ զ Դոթայիմ երթանք՝
կ'ըսէին ։ Եւ Յովսէփ իր եղբայր-
ներուն ետևէն գնաց , ու զանոնք
18 Դոթայիմի մէջ գտաւ ։ Եւ երբ
զանիկայ հեռուէն տեսան , դեռ
ինքը անոնց չմօտեցած , է զանիկայ
19 մեռցնելու միաբանեցան . Ու իրա-
րու ըսին . Ահա՛ ան * երազ տեսնո-
20 ղը՝ կու գայ . Ը Ուստի հիմա եկէ՛ք
մեռցընենք զանիկայ , ու գուբի մը
մէջ նետենք , ու ըսենք թէ՝ Չար
գազան մը կերաւ զանիկայ . և տես-
նենք թէ անոր երազները ինչ պի-
21 տի ըլլան ։ Ու թ Ռուբէն լսածին
պէս՝ անոնց ձեռքէն ազատեց զա-
նիկայ , ըսելով . Չմեռցընենք զա-
22 նիկայ ։ Եւ Ռուբէն ըսաւ անոնց .
Արիւն մի՛ թափէք , հապա զանիկայ
աս գուբը նետեցէք՝ որ անապա-
տին մէջն է , և անոր ձեռք մի՛
զարնէք . աս կ'ըսէր՝ որ կարենայ
ազատել զանիկայ անոնց ձեռքէն՝
իր հօրը դարձընելու համար ։
23 Ու եղաւ որ Յովսէփ իր եղբայր-
ներուն քովը եկածին պէս՝ մերկա-
ցուցին Յովսէփը իր պատմուճա-
նէն , այսինքն՝ իր վրայի բազմագոյն
24 պատմուճանէն . Եւ առին զանի-
կայ , ու գուբը նետեցին . և գուբը
25 պարապ էր , մէջը ջուր չկար ։ ի Եւ
նստան հաց ուտելու . ու իրենց
աչքերը վերցուցին ու տեսան , և
ահա Իսմայէլացւոց մէկ կարաւա-
նը կու գար Գաղաադէն , որ իրենց
ուղտերը համեմներով , և բալա-
սանով , ու զմուռսով բեռնաւո-
րած Եգիպտոս տանելու կ'երթա-
26 յին ։ Եւ Յուդա ըսաւ իր եղբայրնե-
րուն . Ի՞նչ օգուտ կ'ըլլայ՝ թէ որ
մեր եղբայրը մեռցընենք , ու ժա-
27 նոր արիւնը ծածկենք . Եկէք Իս-
մայէլացիներուն ծախենք անիկայ ,
և մեր ձեռքը անոր չդպչի . ինչու
որ անիկայ մեր եղբայրը ու մեր
մարմինն է . և անոր եղբայրները
28 հաճեցան ։ Ու երբոր Մադիանա-
ցի վաճառականները կ'անցնէին ,
Յովսէփը գուբէն քաշեցին՝ ու
դուրս հանեցին իր եղբայրները ,
և Իսմայէլացիներուն ծախեցին
Յովսէփը քսան կտոր արծա-
թի . անոնք ալ Յովսէփը Եգիպ-
29 տոս տարին ։ Եւ Ռուբէն դէպ ՚ի
գուբը դարձաւ , և ահա՛ Յովսէփը
գուբին մէջը չէր . ու իր հանդերձ-
30 ները պատռեց ։ Եւ դարձաւ իր
եղբայրներուն ու ըսաւ . Տղան
չկայ . ու ես ո՞ւր երթամ ։
31 Եւ առին Յովսէփին պատմու-
ճանը , ու այծերէն նոխազ մը մոր-
թեցին , և պատմուճանը արիւնը
32 թաթխեցին ։ Ու խրկեցին բազմա-
գոյն պատմուճանը , ու իրենց հօ-
րը տարին , ու ըսին . Աս գտանք
մենք . գիտցի՛ր հիմա թէ աս քու
որդւոյդ պատմուճանն է՝ թէ չէ ։
33 Եւ անիկայ ճանչցաւ ան , ու ըսաւ .
Իմ որդւոյս պատմուճանն է , Չար
գազան մը կերած է զանիկայ . Յով-
34 սէփը անշուշտ փառատուեցաւ ։ Եւ
Յակոբ պատռեց իր հանդերձները ,
ու քուրձ հագաւ իր մէջքին վրայ .
և իր որդւոյն համար շատ օրեր սուգ
35 ըրաւ ։ Ու իր բոլոր որդիները ու
իր բոլոր աղջիկները զինքը մխի-
թարելու ելան . բայց ինքը մխի-
թարուիլ չէր ուզեր . ու ըսաւ .
Ես սուգով պիտի իջնեմ գերեզ-
մանը՝ իմ որդւոյս քովը ։ Այսպէս
անոր հայրը լացաւ անոր համար ։
36 Եւ Մադիանացիները ծախեցին
զանիկայ Եգիպտոսի մէջ՝ Փարա-
ւոնի ներքինիին՝ Պետափրէս դահ-
ճապետին ։

## ԳԼ. ԼԸ

1 Յուդան՝ Էրը . Օնանը և Սելոմը կը ծնանի ։ 6 Էրը Թամարին հետ կը կարգուի ։ 8 Օնանին յանցանքը ։ 11 Թամար՝ Սելոմին կը սպասէ . 13 կը խաբէ Յուդան . 27 ու Փարէսը և Զարան երկուորեակ կը ծնանի ։

1 Ու եղաւ որ ան ատենը՝ Յուդա իր
եղբայրներուն քովէն իջաւ , ու
Ոդողոմացի մէկու մը քով գնաց ,
2 որուն անունը Հիրաս էր ։ Եւ Յու-

Ն. Ք. ԶՔ.
Իբր 1729

կ Տես Հմր 28. 36։
Ճ Երեմ. Ը. 22։
† Կամ՝ աղանդանոյնով
Ժ Գլ. Դ. 10։ Հմր 20։ Յոբ. ԺԶ. 18։
Յ Ա Թագ. ԺԸ. 17։
Ն Գլ. ԽԲ. 21։
Շ Գլ. ԻԹ. 14։
Ո Դատ. Զ. 3։ Գլ. ԽԵ. 4, 5։
Չ Սաղ. ՃԵ. 17։ Գոր. Է. 9։
Պ Տես Մատ. ԻԷ. 9։
Ջ Յոբ. Ա. 20։
Ռ Գլ. ԽԲ. 13, 36։ Երեմ. ԼԱ. 15։
Ս Հմր 23։
Վ Հմր 20։ Գլ. ԽԴ. 28։
Տ Հմր 29։ Բ Թագ. Գ. 31։
Ր Բ Թագ. ԺԲ. 17։
Ց Գլ. ԽԲ. 38։ ԽԴ. 29, 31։
Ւ Գլ. ԼԹ. 1։
‡ Եբ՝ պալատականին ։ Կամ՝ սննեկապետին ։

Փ Գլ. ԺԹ. 3։ 4 Թագ. Դ. 8։

դան ᵇՇաւա անունով Քանանացիի
մը աղջիկը ᶜտեսաւ, ու առաւ զա–
3 նիկայ, և մտաւ անոր ։ Ու անիկայ
յղացաւ, ու որդի մը ծնաւ. և
4 անոր անունը ᵈԷր դրաւ ։ Ու նո–
րէն յղացաւ, ու որդի մը ծնաւ. և
5 անոր անունը ᵉՕնան դրաւ ։ Եւ
դարձեալ որդի մըն ալ ծնաւ, ու
անոր անունը ᶠՍելոմ դրաւ. և եր–
բոր զանիկայ ծնաւ՝ Յուդան Քե–
զիբի մէջ էր ։
6 Եւ Յուդա իր առջինեկ տղուն
Էրին ᵍկնիկ մը առաւ, որուն ա–
7 նունն էր Թամար ։ Եւ ʰՅուդային
առջինեկը Էր չար էր Տէրոջը առ–
ջեւ. ⁱու Տէրը մեռցուց զանիկայ ։
8 Եւ Յուդան ըսաւ Օնանին. Մտի՛ր
ʲքու եղբօրդ կնկանը, ու տագրու–
թեան իրաւունքը կատարէ՛ անոր, և
9 քու եղբօրդ սերունդ հանէ ։ Եւ
Օնան գիտցաւ որ սերունդը ᵏիրենը
պիտի չըլլայ. անոր համար երբոր
իր եղբօրը կնկանը կը մտնէր, ˡերկ–
գետինը կը թափէր՝ որ իր եղբօրը
10 սերունդ չտայ ։ Եւ աս ըրած բա–
նը Տէրոջը առջին գէշ երեւցաւ, ու
11 ᵐզանիկայ ալ մեռցուց ։ Եւ Յուդա
իր Թամար հարսին ըսաւ. ⁿՈրբեա–
րի նստէ քու հօրդ տունը՝ մինչև որ
իմ Սելոմ որդիս մեծնայ. քանզի
ըսաւ. Չըլլայ որ աս ալ իր եղ–
բայրներուն պէս մեռնի. և Թամար
գնաց ու ᵒիր հօրը տունը նստաւ ։
12 Եւ շատ օրերէն ետքը մեռաւ
Շաւային աղջիկը՝ Յուդային կնի–
կը. և Յուդա ᵖմխիթարուեցաւ,
ու Թամնա գնաց իր հօտերը աս–
րակտուր ընողներուն՝ ինքը ու
իր բարեկամը Ոդոդոմացի Հիրա–
13 սը ։ Եւ զրուցուեցաւ Թամա–
րին՝ ըսելով. Ահա քու սկեսրայրդ
ᵠգէպ 'ի Թամնա կ'ելլէ՝ իր ոչխար–
14 ները ասրակտուր ընելու ։ Ան ալ
իր որբևարութեան հանդերձները
հանեց իր վրայէն, ու քօղով մը
ծածկուեցաւ՝ ու պլլուեցաւ, և
Թամնայի ճամբուն մէջը եղող
Ենայիմի դուռը ʳնստաւ. քանզի
տեսաւ որ ˢՍելոմը մեծցաւ, ու ին–
քը անոր կնիկ ըլլալու չտրուեցաւ ։
15 Երբոր Յուդան տեսաւ զանիկայ,
բոզ կարծեց, ինչու որ իր երեսը
16 ծածկեր էր ։ Եւ ճամբան անոր
դարձաւ ու ըսաւ. Շնո՛րհք ըրէ,
քեզի մտնեմ. քանզի չէր գիտեր
թէ անիկայ իր հարսն է ։ Եւ ա–
նիկայ ըսաւ. Ինծի մտնելու համար
17 ի՞նչ կու տաս ինծի ։ Ան ալ ըսաւ.
ᵗԵս հօտէն այծի ուլ մը կը խրկեմ
հօտերէն. և անիկայ ըսաւ. ᵘԳրաւ
18 մը կու տա՞ս մինչև խրկելդ ։ Եւ
Յուդան ըսաւ. Ի՞նչ գրաւ տամ
քեզի. ու անիկայ ըսաւ. ᵛՔու
մատնիդ ու ժապաւէնդ և ձեռքիդ
գաւազանը տուր. ան ալ տուաւ
անոր, ու մտաւ անոր, և Թամար
19 անկէ յղի մնաց ։ Եւ ելաւ ու գնաց,
ու ʷիր վրայէն քօղը հանեց, ու իր
որբևարութեան հանդերձները հա–
20 գաւ ։ Եւ Յուդա իր բարեկամին
Ոդոդոմացիին ձեռքովը այծին ուլը
խրկեց, որ կնկանը ձեռքէն գրաւը
21 առնէ. բայց չգտաւ զանիկայ ։ Եւ
ան տեղի մարդոցը հարցուց՝ ըսե–
լով. Ճամբուն վրայ Ենայիմի մէջ
եղած բոզը ո՞ւր է. և անոնք ըսին.
22 Հոս բոզ չկար ։ Եւ դարձաւ Յու–
դային, ու ըսաւ. Չգտայ զանիկայ,
և ան տեղի մարդիկն ալ ըսին թէ՝
23 Հոս բոզ չկար ։ Եւ Յուդան ըսաւ.
Իրեն թող ըլլայ. որ խայտառակ
չըլլանք. ահա ես աս ուլը խրկեցի,
24 ու դուն չգտար զանիկայ ։ Եւ եղաւ
որ իրեք ամիսէն ետքը՝ Յուդային
պատմուեցաւ՝ ըսելով. Քու հարսդ
Թամար ˣպոռնկեցաւ, նաև ահա
պոռնկութենէն յղի մնաց. և Յու–
դան ըսաւ. Հանեցէք զանիկայ,
25 ʸու այրուի ։ Երբոր զանիկայ դուրս
կը հանէին, ᶻկրտսերը իր սկեսրայ–
րին խրկեց՝ ըսելով. Ես աս բանե–
րուն տիրոջմէն յղի եմ. նաև ըսաւ.
Շնո՛րհք ըրէ՝ ᵃճանչցիր ᵇթէ աս
մատանին ու ժապաւէնը և գաւա–
26 զանը որո՞ւնն է ։ Եւ Յուդան ճանչ–
ցաւ ու ըսաւ. ᶜԱնիկայ ինծմէ
արդար է. ինչու որ ᵈզանիկայ իմ
որդւոյս Սելոմին չտուի. և ᵉմէյմըն
ալ նորէն չգիտցաւ զանիկայ ։
27 Ու եղաւ որ անոր ծնած ատենը՝
ահա անոր արգանդին մէջ երկուո–
28 րեակ էին ։ Եւ եղաւ որ երբ կը
ծնանէր, մէկը ձեռքը երկընցուց.
և մանկաբարձը առաւ՝ ու անոր
ձեռքին վրայ կարմիր դերձան կա–
պեց՝ ըսելով. Առաջ աս ելաւ ։
29 Եւ անիկայ իր ձեռքը ետ քաշածին
պէս՝ ահա անոր եղբայրը ելաւ. և
մանկաբարձը ըսաւ. Ինչո՞ւ ցանգը
պատռեցիր. աս պատառումը քու
վրադ ըլլայ. անոր համար անոր ա–
30 նունը ᶠ*Փարէս դրուեցաւ ։ Ու
ետքը՝ ձեռքին վրայ կարմիր դեր–
ձան ունեցող եղբայրը ելաւ, և ա–
նոր անունը Զարա դրուեցաւ ։

## ԳԼ. ԼԹ

1 Յովսէփ՝ Պետափրեսին տանը մէջ կը յառա–
ջանայ ։ 7 Իր տիկինին փորձութեանը դէմ կը
կենայ ։ 13 Ստութեամբ ամբաստանուելով,
20 բանտը կը ձգուի ։ 21 Բանտին մէջ Աս–
տուած անոր հետ կ'ըլլայ ։

1 Եւ Յովսէփը Եգիպտոս իջեցուցին.
և Փարաւոնի ներքինին՝ Եգիպ–
տացի ᵃՊետափրէս դահճապետը
ᵇծախու առաւ զանիկայ Իսմայէ–
լացիներուն ձեռքէն, որոնք զանի–

Ն. Ք. ԳՖ.
Իբր 1729

ᵇ Ա Մն. բ. 3 ։

Իբր 1727

ᶜ Գլ. լԶ. 2 ։
ᵈ Գլ. խԶ. 12 ։ Թուոց. իԶ. 19 ։
ᵉ Գլ. խԶ. 12 ։ Թուոց. իԶ. 19 ։
ᶠ Գլ. խԶ. 12 ։ Թուոց. իԶ. 20 ։
ᵍ Գլ. իա. 21 ։
ʰ Գլ. խԶ. 12 ։ Թուոց. իԶ. 19 ։
ⁱ Ա Մն. բ. 3 ։
ʲ Բ Օր. իե. 5 ։ Մատ. իբ. 24 ։
ᵏ Բ Օր. իե. 6 ։
ˡ Գլ. խԶ. 12 ։ Թուոց. իԶ. 19 ։
ᵐ Հռութ. ա. 13 ։
ⁿ Ղև. իբ. 13 ։
ᵒ Բ Թագ. ժգ. 39 ։
ᵖ Յես. ժե. 10. 57 ։ Դատ. ժդ. 1 ։
ᵠ Առակ. է. 12 ։
ʳ Հմր 11 ։ 26 ։
ᵗ Եզեկ. ժզ. 33 ։
ᵘ Հմր 20 ։
ᵛ Հմր 25 ։

Ն. Ք. ԳՖ.
Իբր 1727

ʷ Հմր 14 ։
ˣ Դատ. ժԹ. 2 ։
ʸ Ղև. իա. 9 ։ Բ Օր. իբ. 21 ։
ᶻ Գլ. լԵ. 32 ։
ᵃ Հմր 18 ։
ᵇ Գլ. լԵ. 33 ։
ᶜ Ա Թագ. իդ. 18 ։
ᵈ Հմր 14 ։
ᵉ Յոբ. լգ. 31 ։ 32 ։
ᶠ Գլ. խԶ. 12 ։ Թուոց. իԶ. 20 ։ Ա Մն. բ. 4 ։ Մատ. ա. 3 ։
* Այ՝ պատառումն ։

1729

ᵃ Գլ. լԵ. 36 ։ Սաղ. ճե. 17 ։
ᵇ Գլ. լԵ. 28 ։

Ն. Ք. ԱՌ. 1729

ա Հմր 21 ։ Գլ. իա. 22 ։ իգ. 24, 28 ։ իը. 15 ։ Ա Թագ. ժզ. 18 ։ ժը. 14, 28 ։ Գործ. է. 9 ։
բ Սաղ. ա. 3 ։
գ Գլ. ժը. 3 ։ ժթ. 19 ։ Հմր 21 ։
դ Ծն. իդ. 2 ։
ե Գլ. լ. 27 ։
զ Ա Թագ. ժզ. 12 ։
է Բ Թագ. ժգ. 11 ։
ը Առակ. զ. 29, 32 ։
թ Գլ. ի. 6 ։ Ղև. զ. 2 ։ Բ Թագ. ժբ. 13 ։ Սաղ. ծա. 4 ։
ժ Առակ. է. 13, ։

2 կայ հոն իջեցուցին ։ Եւ ա Տէրը
Յովսէփին հետն էր , ու անիկայ
յաջողակ մարդ մըն էր . ու իր Ե-
գիպտացի տիրոջը տունն էր անի-
3 կայ ։ Եւ անոր տէրը տեսաւ որ
Տէրը անոր հետն է . քանզի բ ինչ
որ ընէր , Տէրը կը յաջողէր անոր
4 ձեռքովը ։ Եւ Յովսէփ գ շնորհք
գտաւ անոր առջևը , ու կը ծառա-
յէր անոր , որ դ իր տանը վրայ վե-
րակացու ըրաւ զանիկայ , և իր բո-
լոր ունեցածը անոր ձեռքը յանձ-
5 նեց ։ Ու եղաւ որ զանիկայ իր տա-
նը ու իր բոլոր ունեցածին վրայ
վերակացու ըրած ժամանակէն՝
ե Տէրը Եգիպտացիին տունը օրհնեց
Յովսէփին համար . և թէ տանը
մէջ և թէ դաշտին մէջ անոր բոլոր
ունեցածին վրայ Տէրոջը օրհնու-
6 թիւնը եղաւ ։ Եւ իր բոլոր ունե-
ցածը Յովսէփին ձեռքը թողուց .
ու ինչ որ ունէր՝ չէր գիտեր , իր
կերած հացէն զատ ։ Եւ Յովսէփ
զ գեղեցիկ էր երեսով՝ ու գեղեցիկ
տեսքով ։
7 Եւ եղաւ որ աս բաներէն ետքը՝
անոր տիրոջը կնիկը աչք տնկեց
Յովսէփին վրայ , ու ըսաւ . է Պառ-
8 կէ ինծի հետ ։ Բայց անիկայ չհա-
ճեցաւ , ու իր տիրոջը կնկանը
ըսաւ . Ահա իմ տէրս տանը մէջ
իմ քովս ինչ որ կայ՝ չգիտեր . և
իր բոլոր ունեցածը իմ ձեռքս
9 յանձնեց . Աս տանը մէջ ինծմէ մե-
ծը չկայ . ու բան մը ինծմէ չարգի-
լեց՝ քեզմէ 'ի զատ . ինչու որ դուն
անոր կնիկն ես . ը ուրեմն ես ի՞նչ-
պէս աս մեծ չարութիւնը ընեմ , ու
10 թ Աստուծոյ դէմ մեղանչեմ ։ Եւ
քանի որ անիկայ օրէ օր Յովսէփին
կը զրուցէր , անիկայ մտիկ չէր
ըներ անոր՝ որ հետը պառկի կամ
11 հետը ըլլայ ։ Ու եղաւ որ օր մը
իր գործին համար տունը եկաւ . և
հոն տանը մէջ տանը մարդիկներէն
12 մէկը չկար ։ Ու ժ կնիկը բռնեց անոր
հանդերձէն՝ ըսելով . Պառկէ ինծի
հետ . և անիկայ իր հանդերձը ա-
նոր ձեռքը թողուց , ու փախաւ
13 դուրս ելաւ ։ Ու երբոր տեսաւ՝ որ
անիկայ իր հանդերձը թողուց , ու
14 դուրս փախաւ , իր տանը մարդի-
կը կանչեց , և զրուցեց անոնց՝ ըսե-
լով . Նայեցէ՛ք , մեզի Եբրայեցի
մը բերաւ՝ մեզ խայտառակ ընելու
համար . անիկայ ինծի եկաւ՝ ինծի
հետ պառկելու համար , ու ես
15 բարձր ձայնով պոռացի . Ու երբոր
լսեց իմ բարձր ձայնով պոռալս ,
իր հանդերձը քովս թողուց , և
16 փախաւ դուրս ելաւ ։ Ու մինչև
որ անոր տէրը տունը եկաւ , անոր
17 հանդերձը իր քովը պահեց ։ Եւ
ժա խօսեցաւ անոր աս խօսքերուն պէս՝
ըսելով . Ան Եբրայեցի ծառան՝ որ
դուն մեզի բերիր , իս խայտառակ
18 ընելու համար եկաւ ինծի ։ Ու
երբոր իմ ձայնս վերցուցի ու պո-
ռացի , իր հանդերձը քովս թողուց ,
ու դուրս փախաւ ։
19 Եւ եղաւ որ երբ անոր տէրը լսեց
իր կնկանը խօսքերը՝ որ զրուցեց
իրեն՝ ըսելով . Քու ծառադ ինծի
այսպէս ըրաւ , իր ժբ բարկութիւնը
20 բորբոքեցաւ ։ Եւ Յովսէփին տէրը
առաւ զանիկայ ու ժգ բանտը դրաւ ,
ան տեղը՝ ուր որ թագաւորին բան-
տարկեալները կապուած էին . և
21 հոն բանտին մէջ մնաց ։ Բայց Տէ-
րը Յովսէփին հետն էր ու ողորմու-
թիւն ցուցուց անոր . և ժդ բան-
տապետին աչքը շնորհք գտնել
22 տուաւ անոր ։ Ու բանտապետը
ժե Յովսէփին ձեռքը յանձնեց բան-
տին մէջը եղած բոլոր բանտար-
կեալները . և հոն ամէն գործը տես-
23 նողը անիկայ էր ։ Բանտապետը՝
անոր ձեռքը եղած մէկ բանին չէր
նայեր . ինչու որ ժզ Տէրը անոր հետն
էր , ու անոր ամէն ըրածները Տէրը
կը յաջողէր ։

Ն. Ք. ԱՌ. 1729

ժա Ել. իգ. 1 ։ Սաղ. ճի. 3 ։
ժբ Առակ. զ. 34, 35 ։
ժգ Սաղ. ճե. 18 ։ Ա Պետ. բ. 19 ։ Տես Գլ. խ. 3, 15 ։ խա. 14 ։
ժդ Ել. գ. 21 ։ ժա. 3 ։ ժբ. 36 ։ Սաղ. ճզ. 46 ։ Առակ. ժզ. 7 ։ Դան. ա. 9 ։ Գործ. է. 9, 10 ։
ժե Գլ. խ. 3, 4 ։
ժզ Հմր 2, 3 ։

## ԳԼ. Խ

1 Փարաւոնին մատուակարարը ու հացագործը բանտին մէջ ։ 4 Բանտապետը անոնք Յովսէփին պահպանութեանը կը յանձնէ ։ 5 Յովսէփ անոնց երազները կը մեկնէ , 20 որ նոյն մեկնութեանը համեմատ կը կատարուին ։ 23 Մատուակարարին ապերախտութիւնը ։

1 Եւ եղաւ որ աս բաներէն ետքը՝
Եգիպտոսի թագաւորին ա մա-
տուակարարը ու հացագործը իրենց
տիրոջը Եգիպտոսի թագաւորին
2 դէմ յանցանք գործեցին ։ Եւ Փա-
րաւոն բարկացաւ բ իր երկու ներ-
քինիներուն՝ այսինքն մատուակարա-
րապետին ու հացագործապետին .
3 գ Եւ զանոնք դահճապետին տանը
բանտին մէջ բանտարկեց՝ ուր որ
4 Յովսէփը բանտարկուած էր ։ Եւ
դահճապետը Յովսէփին ապսպրեց
անոնց համար , ու անիկայ կը ծա-
ռայէր անոնց . և անոնք ատեն մը
բանտը մնացին ։
5 Ու Եգիպտոսի թագաւորին մա-
տակարարը ու հացագործը՝ որոնք
բանտին մէջ կապուած էին , եր-
կուքն ալ մէկ գիշեր՝ մէյմէկ երազ
տեսան , ամէն մէկուն երազին նշա-
6 նակութեանը պէս ։ Եւ Յովսէփ
առտուանց անոնց եկաւ , ու տեսաւ
7 զանոնք որ խռովեր էին ։ Ու իր
տիրոջը տունը իր հետը բանտար-
կուած Փարաւոնին ներքինիներուն
հարցուց՝ ըսելով . դ Ինչո՞ւ համար
ձեր երեսները տրտում են այսօր ։
8 Եւ անոնք ըսին անոր . ե Երազ տե-

Իրր 1720
ա Նէեմ. ա. 11 ։
բ Առակ. ժզ. 14 ։
գ Գլ. լթ. 20, 23 ։
Իրր 1718
դ Նէեմ. բ. 2 ։
ե Գլ. խա. 15 ։

Ն. Ք. ԶՔ.
երր 1718

սանք, ու զանիկայ մեկնող չկայ.
և Յովսէփ ըսաւ անոնց. ՚Չէ՞ որ
Աստուծոյ կը վերաբերի անոնց մեկ-
նութիւնը. անշէ պատմեցէ՛ք ինծի։
9 Եւ մատակարարապետը իր երազը
պատմեց Յովսէփին, ու ըսաւ ա-
նոր. Երազիս մէջ *տեսայ որ" առ-
10 ջևս որթ մը կար. Եւ որթին վրայ
իրեք ուռ կային. և ան բողբոջելուն
պէս՝ ծաղիկ բացաւ, ու անոր ող-
11 կոյզները խաղող հասցուցին. Եւ
Փարաւոնին գաւաթը ձեռքս էր.
ու խաղողները առի, և Փարաւոնին
գաւաթին մէջ ճմլեցի, ու գաւա-
12 թը Փարաւոնին ձեռքը տուի։ Եւ
Յովսէփ անոր ըսաւ. ꝰԱսոր մեկ-
նութիւնը աս է. իրեք ուռը՝ ꝰիրեք
13 օր է. Իրեք օրէն ետքը Փարաւոն
ꝰքու գլուխդ պիտի բարձրացընէ ու
քեզ նորէն քու պաշտօնիդ պիտի
դարձընէ. և Փարաւոնին գաւաթը
անոր ձեռքը պիտի տաս՝ անոր մա-
տակարարը եղածիդ առջի սովորու-
14 թեանը պէս։ Բայց քեզի բարիք
եղած ատենը՝ ꝰզիս մի՛ տըքդ բեր, և
կ'աղաչեմ քեզի՝ ինծի ꝰբարերարու-
թիւն ըրէ, և զիս Փարաւոնին առ-
ջևը յիշելով՝ զիս աս տունէն դուրս
15 հանէ. Քանզի իբաւցընէ գողցուե-
ցայ Եբրայեցւոց երկրէն. ꝰև հոս
ալ բան մը չըրի որ իս աս գուբը
նետեն։
16 Երբոր հացագործապետը տեսաւ
որ աղէկ մեկնութիւն տուաւ, ը-
սաւ Յովսէփին. Ես ալ երազիս
մէջ տեսայ՝ որ գլխուս վրայ իրեք
17 †ճերմակ սակառ ունէի. Եւ ամե-
նուն վրայի սակառին մէջ հացա-
գործի շինած Փարաւոնին ամէն
կերակուրներէն կար. ու թռչուն-
ները կ'ուտէին զանոնք գլխուս վը-
18 րայի սակառէն։ Եւ Յովսէփ պա-
տասխան տուաւ, ու ըսաւ. ꝰԱ-
սոր մեկնութիւնը աս է. իրեք սա-
19 կառը՝ իրեք օր է. ꝰԻրեք օրէն ետքը՝
Փարաւոն վրայէդ պիտի վերցընէ
քու գլուխդ, ու քեզ ծառէ մը
պիտի կախէ. և թռչունները վրա-
յէդ քու մարմինդ պիտի ուտեն։
20 Ու եղաւ որ երրորդ օրը՝ Փարա-
ւոնին ꝰծննդեանը օրն էր, և իր բո-
լոր ծառաներուն ꝰխնջոյք ըրաւ.
և իր ծառաներուն մէջը՝ մատակա-
րարապետը ու հացագործապետը
21 ꝰվեր հանեց. Ու ꝰդարձուց մատա-
կարարապետը իր պաշտօնին, և
ꝰանիկայ գաւաթը Փարաւոնին
22 ձեռքը տուաւ. Բայց հացագոր-
ծապետը ꝰկախել տուաւ, ինչպէս
23 որ Յովսէփ մեկներ էր անոնց։ Եւ
մատակարարապետը միտքը չբերաւ
Յովսէփը, հապա մոռցաւ զանի-
կայ։

Ղ Ծն. ԴԼ. Խա. 16։ Դան. Բ. 11, 28, 47։
* Եբր. և ահա՛
Ե Հմր 18։ ԳԼ. Խա. 12, 25։ Դատ. Է. 14։ Դան. Բ. 36։ Դ. 19։
Է ԳԼ. Խա. 26։
Ը Դ Թագ. ԻԵ. 27։ Սաղ. Գ. 3։ Երեմ. ԾԲ. 31։
Թ Ղու. ԻԴ. 42։
Ժ Յես. Բ. 12։ Ա Թագ. Ի. 14, 15։ Բ Թագ. Թ. 1։ Ա Թագ. Բ. 7։
Ի ԳԼ. ԼԹ. 20։
† Կամ՝ վանդակաւոր, կամ նաշինի
Լ Հմր 12։
Ծ Հմր 13։
Կ Մատ. ԺԴ. 6։
Հ Մար. Զ. 21։
Ձ Հմր 13, 19։ Մատ. ԻԵ. 19։
Ղ Հմր 13։
Ճ Նեեմ. Բ. 1։
Մ Հմր 19։
Յ Յոբ. ԺԹ. 14։ Սաղ. Լա. 12։ Ժող. Թ. 15, 16։ Ամով. Զ. 6։

ԳԼ. ԽԱ

1 Փարաւոն երկու երազ կը տեսնէ։ 25 Յովսէփ զանոնք կը մեկնէ, 33 ու Փարաւոնին խորհուրդ կու տայ։ 38 Յովսէփին յառաջադիմութիւնը։ 50 Մանասէին ու Եփրեմին ծնունդը։ 54 Սովը կը սկսի։

1 Ու եղաւ որ լման երկու տարիէն
ետքը՝ Փարաւոն ꝰերազին մէջ
տեսաւ՝ որ գետին եզերքը կայներ
2 էր։ Եւ ահա գետէն գեղեցիկ
տեսքով ու պարարտ մարմինով եօ-
թը երինջներ ելան, ու ‡մարգա-
գետիններ վրայ" կ'արածուէին։
3 Եւ ահա անոնց ետևէն՝ գետէն ու-
րիշ եօթը երինջներ ելան գազիր
տեսքով ու նիհար մարմինով, ու
միւս երինջներուն քովը՝ գետին
4 եզերքը կայնեցան. Եւ գազիր տես-
քով ու նիհար մարմինով երինջ-
ները՝ կերան ան գեղեցիկ տեսքով
ու պարարտ երինջները։ Ետքը
5 Փարաւոն արթընցաւ։ Եւ քնա-
ցաւ, ու երկրորդ անգամ երազին
մէջը տեսաւ՝ որ մէկ ծղօտի վրայ
եօթը պարարտ ու աղէկ հասկեր
6 կ'ելլէին, Եւ ահա անոնց ետևէն
եօթը նիհար ու խորշակահար հաս-
7 կեր կը բուսնէին. Եւ ան եօթը
նիհար հասկերը կը կլլէին եօթը
պարարտ ու լեցուն հասկերը։ Եւ
Փարաւոն արթընցաւ, և ահա ե-
8 րազ էր։ Ու եղաւ որ առտուանց
ꝰանոր հոգին նեղացաւ, ու կան-
չել տուաւ Եգիպտոսի ꝰբոլոր մո-
գերը, և ան տեղի բոլոր ꝰիմաս-
տունները. ու Փարաւոն պատմեց
անոնց իր երազները, բայց մէկը
չկար՝ որ զանոնք Փարաւոնին մեկ-
նէ։
9 Ան ատենը մատակարարապետը
զրուցեց Փարաւոնին՝ ըսելով.
Այսօր ես իմ յանցանքներս կը
10 յիշեմ։ Փարաւոնը ꝰբարկացաւ
իր ծառաներուն, ꝰու զիս դահճա-
պետին տունը բանտը դրաւ, զիս՝
11 ու հացագործապետը. Եւ ꝰեւս ու
անիկայ մէկ գիշեր երազ տեսանք.
ամէն մէկերնիս իր երազին նշանա-
կութեանը պէս երազ տեսանք։
12 Եւ հոն մեզի հետ ꝰդահճապետին
ծառան՝ Եբրայեցի պատանի մը
կար, ու անոր պատմեցինք, և ա-
նիկայ ꝰմեկնեց մեզի մեր երազները.
ամէն մէկերնուս՝ իր երազին պէս
13 մեկնեց։ Ու ինչպէս որ ꝰանիկայ
մեզի մեկնեց, անանկ եղաւ. զիս
իմ պաշտօնիս դարձուց, ու զա-
նիկայ կախեց։
14 ꝰԱն ատենը Փարաւոն մարդ խըր-
կեց՝ ու կանչեց Յովսէփը, և ꝰշու-
տով բանտէն հանեցին զանիկայ.
և ածիլուեցաւ, ու իր հանդերձնե-
րը փոխեց, ու Փարաւոնին եկաւ։

Ն. Ք. ԶՔ.
1715

‡ Կամ՝ պրտուներուն մէջը
Ա Դան. Բ. 1։ Դ. 5, 19։
Բ Ել. Է. 11, 22։ Ես. ԻԹ. 14։ Դան. Ա. 20։ Բ. 2։ Դ. 7։
Գ Մատ. Բ. 1։
Դ ԳԼ. Խ. 2, 3։
Ե ԳԼ. ԼԹ. 20։
Զ ԳԼ. Խ. 5։
Է ԳԼ. ԼԷ. 36։
Ը ԳԼ. Խ. 12։
Թ ԳԼ. Խ. 22։
Ժ Սաղ. ՃԵ. 20։
Ի Դան. Բ. 25։ Ա Թագ. Բ. 8։ Սաղ. ՃԺԳ. 7, 8։

Ն. Ք. Ծ. 1715

ա Հմր 12 ։ Սաղ. ին. 14 ։ Դան. ե. 16 ։
բ Դան. բ. 30 ։ Գոր. գ. 12 ։ բ Կոր. գ. 5 ։
գ Գլ. խ. 8 ։ Դան. բ. 22 , 28 , 47 ։ գ. 2 ։
դ Հմր 1 ։
ե Հմր 8 ։ Դան. գ. 7 ։
զ Դան. բ. 28 , 29 , 45 ։ Յայտ. դ. 1 ։
է Դ Թագ. ը. 1 ։
ը Հմր 25 ։
թ Հմր 47 ։
ժ Հմր 54 ։
ի Գլ. խե. 13 ։
լ Թուոց. իգ. 19 ։ Ես. խզ. 10 , 11 ։

15 Եւ Փարաւոն ըսաւ Յովսէփին ․ Ե-
րազ տեսայ , ու զանիկայ մեկնող
մը չկայ ․ եւ քեզի համար լսեցի որ
կ'ըսեն , թէ լսած երազդ կը մեկ-
16 նես ։ Եւ Յովսէփ պատասխան
տուաւ Փարաւոնին՝ ու ըսաւ ․
Ի՛նձ չէ՛ թէ ես ․ բԱստուած պիտի
տայ խաղաղութեան պատասխան
Փարաւոնին ։
17 Եւ Փարաւոն ըսաւ Յովսէփին ․
դԵրազիս մէջ տեսայ որ գետին եզեր-
18 քը կայներ էի ․ Եւ ահա գետէն եօ-
թը երինջներ ելան՝ պարարտ մարմ-
նով ու գեղեցիկ տեսքով , և մար-
գագետիններն վրայ կ'արածուէին ։
19 Եւ ահա անոնց ետեւէն ուրիշ եօթը
երինջներ ելան՝ նիհար ու խիստ
գէշ տեսքով և վտիտ մարմնով ,
որ անոնց պէս գէշ բնաւ չտեսայ
20 Եգիպտոսի բոլոր երկրին մէջ ։ Եւ
նիհար ու գէշ երինջները կերան
ան առջի եօթը պարարտ երինջնե-
21 րը ․ Ու անոնց փորը մտնելէն ետքը՝
չէր գիտցուեր թէ անոնք անոնց
փորը մտան ․ հապա անոնց տեսքը
առջինին պէս գէշ էր ։ Ետքը ար-
22 թնցայ ։ Եւ դարձեալ երազիս մէջ
տեսայ՝ որ ահա մէկ ցօղունի վրայ
եօթը լեցուն ու աղէկ հասկեր կ'ել-
23 լէին ․ Եւ ահա անոնց ետեւէն եօ-
թը բարակ՝ նիհար ու խորշակա-
24 հար հասկեր կը բուսնէին ․ Եւ նի-
հար հասկերը կլլեցին ան եօթը ա-
ղէկ հասկերը ։ Ու եպատմեցի մոգե-
րուն , բայց մէկը չկար որ ինծի
մեկնէ ։
25 Եւ Յովսէփ ըսաւ Փարաւոնին ․
Մէկ է Փարաւոնին երազը ․ զԱս-
տուած իր ընելիքը յայտնեց Փա-
26 րաւոնին ։ Եօթը աղէկ երինջնե-
րը՝ եօթը տարի են , և եօթը աղէկ
հասկերը՝ եօթը տարի են ․ երազը
27 մէկ է ։ Եւ անոնց ետեւէն ելած
եօթը նիհար ու գէշ երինջները՝
եօթը տարի է , և եօթը պարապ
ու խորշակահար հասկերը՝ էեօթը
28 տարուան սով է ։ ըՓարաւոնին
զրուցած խօսքս աս է ․ Աստուած
իր ընելիքը Փարաւոնին ցուցուցեր
29 է ։ Ահա բոլոր Եգիպտոսի երկրին
մէջ թեօթը տարի մեծ առատու-
30 թիւն պիտի գայ ․ Եւ անոնց ե-
տեւէն ժեօթը տարի սով պիտի
գայ , ու Եգիպտոսի երկրին մէջ
բոլոր առատութիւնը պիտի մոռ-
ցուի ․ և սովը իպիտի սպառէ եր-
31 կիրը ․ Ու երկրին մէջ առատու-
թիւնը պիտի չգիտցուի՝ անկէ ետքը
գալու սովին պատճառաւը ․ ինչու
32 որ խիստ սաստիկ պիտի ըլլայ ։ Եւ
երազը երկու անգամ Փարաւոնին
կրկնուելուն պատճառը աս է որ՝
աս լբանը Աստուծմէ հաստատուե-
ցաւ , և Աստուած շուտով պիտի
33 ընէ ան ։ Ուստի հիմա թող Փա-
րաւոնը հանճարեղ ու իմաստուն
մարդ մը գտնէ , ու զանիկայ Ե-
գիպտոսի երկրին վրայ կեցընէ ։
34 Թող Փարաւոն ասանկ ընէ , ու երկ-
րին վրայ գործակալներ դնէ , ու
Եգիպտոսի երկրին արմտիքներէն
առատութեան եօթը տարիներուն
35 մէջ՝ խհինգէն մէկը առնէ ։ Եւ ան
գալու աղէկ տարիներուն ծբոլոր
պաշարը ժողվեն , ու Փարաւոնին
ձեռքին տակը ցորեն դիզեն , և
քաղաքներուն մէջ պաշար պահեն ։
36 Ու Եգիպտոսի երկրին մէջ ըլլալու
եօթը տարուան սովին դէմ աս
պաշարը երկրին համար պահուի ,
որ երկիրը կսովէն չկորսուի ։
37 Եւ հաս բանը Փարաւոնին աչ-
քին՝ ու անոր բոլոր ծառաներուն
38 աչքին աղէկ երեւցաւ ։ Եւ Փարաւոն
ըսաւ իր ծառաներուն ․ Կրնա՞նք
գտնել ասոր պէս մէկը՝ ձոր իր ներ-
39 սիդին Աստուծոյ Հոգին ունի ։ Եւ
Փարաւոն ըսաւ Յովսէփին ․ Որով-
հետեւ Աստուած աս ամէնը քեզի
ցուցուց , քեզի պէս հանճարեղ ու
40 իմաստուն չկայ ։ ղԴուն իմ տանս
վրայ կեցիր , և իմ բոլոր ժողովուր-
դըս քու բերանդ նայի ․ ես միայն
41 աթոռով քեզմէ մեծ ըլլամ ։ Եւ
Փարաւոն ըսաւ Յովսէփին ․ Ահա
ճքեզ Եգիպտոսի բոլոր երկրին
42 վրայ կեցուցի ։ Եւ Փարաւոն իր
ձեռքէն մատնին մհանեց , ու Յով-
սէփին ձեռքը դրաւ , և յանոր
բեհեզէ հանդերձներ հագցուց ,
նու անոր պարանոցը ոսկի մա-
43 նեակ անցուց ։ Եւ զանիկայ իր
երկրորդ կառքը հեծցուց ․ շու
կը պոռային անոր առջեւէն ․
Ծնրադրութիւն ըրէք ․ և ոԵ-
գիպտոսի բոլոր երկրին վրայ կե-
44 ցուց զանիկայ ։ Եւ Փարաւոն ը-
սաւ Յովսէփին ․ Ես Փարաւոն եմ ․
և առանց քեզի բնաւ մէկը իր ձեռ-
քը կամ իր ոտքը չվերցընէ Եգիպ-
45 տոսի բոլոր երկրին մէջ ։ Ու Փա-
րաւոն Յովսէփին անունը *Փսոմփ-
թոմփանէ դրաւ , և †Արեգ քաղա-
քին'' Պետափրեայ քուրմին աղջիկը
Ասանէթը՝ անոր կնիկ ըլլալու
տուաւ ․ ու Յովսէփ Եգիպտոսի
երկիրը պտըտելու ելաւ ։
46 Եւ Յովսէփ Եգիպտոսի Փարաւոն
թագաւորին չառջեւը ելած ատե-
նը երսուն տարեկան էր ։ Եւ
Յովսէփ Փարաւոնին առջեւէն ելաւ ,
ու Եգիպտոսի բոլոր երկիրը պտը-
47 տեցաւ ։ Եւ առատութեան եօթը
տարիներուն մէջ երկիրը խիստ
48 շատ արդիւնք տուաւ ։ Ու Եգիպ-
տոսի երկրին մէջ եղած եօթը տա-

Ն. Ք. Ծ. 1715

խ Առակ. զ. 6 , 7 , 8 ։
ծ Հմր 48 ։
կ Գլ. խե. 15 , 19 ։
հ Սաղ. ճե. 19 ։ Գոր. է. 10 ։
ձ Թուոց. իէ. 18 ։ Յոբ. լբ. 8 ։ Առակ. բ. 6 ։ Դան. դ. 8 , 18 ։ ե. 11 , 14 ։ զ. 3 ։
ղ Սաղ. ճե. 21 , 22 ։ Գործ. է. 10 ։
ճ Դան. զ. 4 ։
մ Եսթ. գ. 10 ։ ը. 2 , 8 ։
յ Եսթ. ը. 15 ։
ն Դան. ե. 7 , 29 ։
շ Եսթ. զ. 9 ։
ո Գլ. խբ. 6 ։ խե. 8 , 26 ։ Գործ. է. 10 ։
* Ա՛յ՝ Երկրին փրկիչը ։
† Եբր. Օնին
Իրր 1715
չ ա Թագ. ժզ. 21 ։ գ Թագ. ժբ. 6 , 8 ։ Դան. ա. 19 ։

Ն . Ք . ԳՔ
Իբր 1715

րիներուն բոլոր պաշարը ժողվեց ,
ու քաղաքներուն մէջ դրաւ պաշա-
րը . ամէն քաղաքին բոլորտիքը ե-
ղած արտերուն պաշարը՝ նոյն քա-
49 ղաքին մէջը դրաւ ։ Եւ Յովսէփ
օ ծովի աւազին չափ խիստ շատ
ցորեն դիզեց . անանկ որ հաշուի
չգալուն համար՝ չափելը ձգեց ։
50 Եւ սովին տարիները գալէն ա-
ռաջ՝ § Յովսէփին երկու որդի ծնաւ ,
որ Արեգ քաղաքին Պետափրեայ
— քուրմին աղջիկը Ասանէթը ծնաւ
51 անոր ։ Եւ Յովսէփ առջինեկին
անունը *Մանասէ դրաւ . քանզի
ըսաւ . Աստուած ինծի մոռցուց
իմ բոլոր վիշտերս , ու իմ հօրս
52 բոլոր տունը ։ Եւ երկրորդին ա-
նունը †Եփրեմ դրաւ . քանզի ը-
սաւ . Աստուած իմ տառապանացս
երկրին մէջ Բ աճեցուց զիս ։
53 Ու Եգիպտոսի երկրին մէջ եղած
առատութեան եօթը տարին ան-
54 ցաւ ։ Եւ գ Յովսէփին ըսածին պէս՝
դ սովին եօթը տարին գալ սկսեց . և
բոլոր երկիրներուն մէջ սով եղաւ ,
բայց Եգիպտոսի բոլոր երկրին մէջ
55 հաց կար ։ Ու երբոր Եգիպտոսի
բոլոր երկիրը անօթեցաւ , ժողո-
վուրդը հացի համար Փարաւոնին
աղաղակեց . և Փարաւոն ըսաւ բո-
լոր Եգիպտացիներուն . Յովսէփին
գացէք . ինչ որ ձեզի ըսէ , զայն
ըրէք ։
56 Ու երկրին բոլոր երեսին վրայ
սով եղաւ . և Յովսէփ բացաւ բո-
լոր շտեմարանները , ու Ե Եգիպտա-
ցիներուն պաշար ծախեց . և սո-
վը սաստկացաւ Եգիպտոսի երկրին
57 մէջ ։ Զ Ու բոլոր աշխարհ Եգիպ-
տոս կու գային՝ Յովսէփէն պաշար
ծախու առնելու . ինչու որ ամէն
երկրի մէջ սովը սաստկացաւ ։

օ Գլ . Իբ . 17 ։ Դատ . Է . 12 ։ Ա Թագ . Ժգ . 5 ։ Սաղ . Հը . 27 ։
§ Գլ . Խզ . 20 ։ Խը . 5 ։
— Հմր 45 ։
Իբր 1712
* Յն՝ մոռցընող ։
Իբր 1711
† Յն՝ աճեցում ։
Բ Գլ . Խթ . 22 ։
1708
գ Հմր 30 ։
դ Սաղ . ճե . 16 ։ Գործ Է . 11 ։
Ե Գլ . Խբ . 6 ։ Խե . 14 , 24 ։
Զ Բ Օր . Թ . 28 ։

## ԳԼ . ԽԲ

1 Յակոբ իր տասը որդիքը Եգիպտոս կը խրկէ ցորեն ծախու առնելու համար ։ 16 Յովսէփ զանոնք բանտը կը դնէ՝ լրտես էք ըսելով , 18 ու ետքը կ՚ազատէ զանոնք աս պայմանով՝ որ Բենիամինը բերեն ։ 21 Յովսէփը ծախելնին միտք բերելով՝ խիղճերնուն մէջ կը խռովին ։ 24 Շմաւոն իբրև պատանդ կը պահուի ։ 25 Միւսները ցորենը առնելով՝ ետ կը դառնան , 29 ու աս բաները Յակոբին կը պատմեն ։ 36 Յակոբ՝ Բենիամինը խրկել չուզեր ։

1707

1 Ու Ա Յակոբ երբ իմացաւ Եգիպ-
տոսի մէջ պաշար ըլլալը , Յակոբ
ըսաւ իր որդիներուն . Ինչու՞ մէկ-
2 զմէկու կը նայիք ։ Եւ ըսաւ . Ահա
լսեցի որ Եգիպտոսի մէջ պաշար
կայ . հոն իջէք՝ ու անկէ մեզի հա-
մար ծախու առէք , որ Բ ողջ մնանք
3 ու չմեռնինք ։ Եւ Յովսէփին տա-
սը եղբայրները Եգիպտոս իջան ցո-
4 րեն ծախու առնելու ։ Բայց Յա-
կոբ Յովսէփին եղբայրը Բենիամինը՝
անոր եղբայրներուն հետ չխրկեց .
քանզի ըսաւ . Գ Չըլլայ որ փորձանք
մը պատահի անոր ։
5 Եւ Իսրայէլին որդիները հոն գա-
ցողներուն հետ պաշար ծախու առ-
նելու եկան . քանզի Դ Քանանու
6 երկրին մէջ սով կար ։ Ու Յովսէփ
Ե ան երկրին իշխանն էր . և ինքը
երկրին բոլոր ժողովուրդին պաշար
կը ծախէր . ու Յովսէփին եղբայր-
ները եկան , ու Զ իրենց երեսները
մինչև գետինը խոնարհութիւն ըրին
7 անոր ։ Եւ Յովսէփ իր եղբայրները
տեսածին պէս՝ ճանչցաւ զանոնք ,
բայց ինքզինքը անոնց չճանչցուց ,
ու անոնց հետ խստութեամբ խօ-
սեցաւ , և անոնց ըսաւ . Ո՞ւսկից
եկաք . և անոնք ըսին . Քանանու
երկրէն կերակուր ծախու առնելու
8 եկանք ։ Եւ Յովսէփ իր եղբայրները
ճանչցաւ , բայց անոնք զինքը չճանչ-
9 ցան ։ Եւ Յովսէփ Է անոնց վրայով
իր տեսած երազները միտքը բերաւ ,
ու ըսաւ անոնց . Դուք լրտեսներ
էք . երկրին ‡տկարութիւնը տես-
10 նելու եկած էք ։ Եւ ըսին անոր .
Չէ , տէր իմ , հապա քու ծառա-
ներդ կերակուր ծախու առնելու ե-
11 կանք ։ Մենք ամէնքս մէկ մարդու
մը որդիներ ենք , մենք շիտակ մար-
դիկ ենք . ծառաներդ լրտեսներ չեն ։
12 Եւ անիկայ ըսաւ անոնց . Չէ , հա-
պա երկրին տկարութիւնը տեսնելու
13 եկած էք ։ Եւ անոնք ըսին . Մենք
քու ծառաներդ Քանանու երկրին
մէջ մէկ մարդու մը որդիքը ըլլալով՝
տասներկու եղբայրներ ենք . և ահա
պզտիկը այսօր մեր հօրը քովն
14 է , ու մէկալը չկայ ։ Եւ Յովսէփ
ըսաւ անոնց . Աս է որ ձեզի զրուցե-
ցի՝ ըսելով , թէ դուք լրտեսներ էք .
15 Ասով պիտի փորձուիք . Ը Փարաւո-
նին կենացը համար՝ դուք ասկէ պի-
տի չելլէք , թէ որ ձեր պզտիկ եղ-
16 բայրը հոս չգայ ։ Ձեզմէ մէկը ձեր
եղբայրը բերելու խրկեցէք , ու դուք
բանտը դրուիք , որ ձեր խօսքերը
փորձուին , թէ արդեօք ձեր մէջը
ճշմարտութիւն կա՞յ . և թէ չէ ,
Փարաւոնին կենացը համար՝ դուք
17 լրտեսներ էք ։ Եւ իրեք օր բանտը
դրաւ զանոնք ։
18 Եւ երրորդ օրը Յովսէփ ըսաւ
անոնց . Ասանկ ըրէք որ ողջ մնաք .
Թ Ինչու որ ես Աստուծմէ կը վախնամ ։
19 Թէ որ դուք շիտակ մարդիկ էք ,
ձեր եղբայրներէն մէկը ձեր բան-
տարկուած տանը մէջ արգիլուի .
և դուք գացէք , ձեր տանը անօ-
թութեանը համար պաշար տարէք .
20 Ու Ժ ձեր պզտիկ եղբայրը ինծի բե-
րէք , որ ձեր խօսքերը շիտակ ելլեն ,
ու չմեռնիք ։ Եւ անանկ ըրին ։

Ա Գործ . Է . 12 ։
Բ Գլ . Խգ . 8 ։ Սաղ . ճժը . 17 ։ Ես . Լը . 1 ։

Ն . Ք . ԳՔ
1707
Գ Հմր 38 ։
Դ Գործ . Է . 11 ։
Ե Գլ . Խա . 41 ։
Զ Գլ . Լէ . 7 ։
Է Գլ . Լէ . 5 , 9 ։
‡ Եբր . մերկութիւնը
Ը Տես Ա Թագ . Ա . 26 ։ Ժէ . 55 ։
Թ Ղև . Իե . 43 ։ Նեեմ . Ե . 15 ։
Ժ Հմր 34 ։ Գլ . Խդ . 5 ։ Խդ . 23 ։

Ն. Ք. ԶՌ. 1707

21 Ու մէկզմէկու ըսին . Իրաւցընէ
մեր եղբօրը վրայով յանցաւոր ենք .
ինչու որ մենք տեսանք անոր հոգի-
ին նեղութիւնը՝ երբոր ինքը մեզի
աղաչեց , ու մտիկ չըրինք . Անոր
համար աս նեղութիւնը վրանիս
22 եկաւ ։ Եւ Ռուբէն պատասխան
տուաւ անոնց՝ ըսելով . Ես ձեզի
չըսի՞ , ըսելով թէ , Տղուն
դէմ մեղք մի՛ գործէք . ու դուք
մտիկ չըրիք . և ահա հիմա անոր
արիւնը մեզմէ կը պահանջուի ։
23 Եւ անոնք չէին գիտեր որ Յովսէփ
կը հասկընար . ինչու որ թարգմա-
24 նով կը խօսէր իրենց հետ ։ Եւ
անոնցմէ զատուեցաւ ու լացաւ . և
նորէն անոնց դարձաւ , ու խօսեցաւ
անոնց հետ . և անոնցմէ Շմաւոնը
առաւ , ու անոնց աչքին առջևը
կապեց զանիկայ ։
25 Ետքը Յովսէփ հրաման ըրաւ որ
անոնց ամանները ցորենով լեցընեն ,
ու ամէն մէկուն ստակը իր քուրձին
մէջը դնեն , և անոնց ճամբու պա-
շար տան ։ Ու ասանկ ըրաւ ա-
26 նոնց ։ Եւ անոնք իրենց էշերուն
վրայ բեռցուցին ցորենը , ու անկէ
27 գացին ։ Եւ անոնցմէ մէկը՝ իջևա-
նին մէջ իր իշուն կեր տալու հա-
մար իր քուրձը բացածին պէս՝ իր
ստակը տեսաւ , որ ահա իր քուր-
28 ձին բերանն էր ։ Ու իր եղբայր-
ներուն ըսաւ . Իմ ստակս ետ տըր-
ուեցաւ , և ահա հոս իմ քուրձիս
մէջն է . ու անոնց սիրտը խռովե-
ցաւ , ու վախնալով իրարու ըսին .
Ի՞նչ է աս՝ որ Աստուած մեզի
ըրաւ ։
29 Ու եկան Քանանու երկիրը ի-
րենց հօրը Յակոբին , և բոլոր ի-
րենց գլուխը եկածները պատմեցին
30 անոր՝ ըսելով . Ան երկրին տէրը ե-
ղող մարդը մեզի խստութեամբ
խօսեցաւ , ու մեզ երկիրը լրտեսող-
31 ներու տեղ դրաւ ։ Եւ ըսինք ա-
նոր . Մենք շիտակ մարդիկ ենք .
32 լրտեսներ չենք . Մենք՝ մեր հօրը
որդիքը՝ տասուերկու եղբայրներ
ենք . մէկը չկայ , և ամենէն պզտիկը
Քանանու երկրին մէջ մեր հօրը
33 քովն է այսօր ։ Եւ ան երկրին
տէրը եղող մարդը ըսաւ մեզի .
Ձեր շիտակ մարդիկ ըլլալը ասկէ
գիտնամ . ձեր եղբայրներուն մէկը
իմ քովս ձգեցէք , և ձեր ընտանեա-
ցը անօթութեանը համար ցորեն
34 առէք , ու գացէք . Եւ ձեր պզտիկ
եղբայրը ինծի բերէք , որ գիտնամ
թէ՝ դուք լրտեսներ չէք , հապա
շիտակ մարդիկ էք . այնպէս ձեր
եղբայրը ձեզի կու տամ , ու աս երկ-
35 րին մէջ առուտուր ըրէք ։ Ու
եղաւ որ իրենց քուրձերը պարպած
ատեննին , ահա ամէն մէկուն ստա-
կին ծրարը իր քուրձին մէջն էր . և
իրենք ու իրենց հայրն ալ ստակին
ծրարները տեսածնուն պէս՝ վախ-
36 ցան ։ Եւ անոնց հայրը Յակոբ ը-
սաւ անոնց . Զիս անորդի թողու-
ցիք . Յովսէփը չկայ , Շմաւոնը
չկայ , Բենիամինն ալ պիտի առնէք .
ասոնց ամէնը իմ գլխուս եկաւ ։
37 Եւ Ռուբէն խօսեցաւ իր հօրը՝ ու
ըսաւ . Թէ որ ես զանիկայ քեզի
չբերեմ , իմ երկու որդիներս մեռ-
ցուր . զանիկայ իմ ձեռքս յանձնէ ,
ու ես քեզի ետ կը բերեմ անիկայ ։
38 Բայց Յակոբ ըսաւ . Իմ որդիս
ձեզի հետ չերթար . ինչու որ ա-
նոր եղբայրը մեռած է , ու անիկայ
մինակ մնաց . և թէ որ ձեր եր-
թալու ճամբուն մէջ անոր փոր-
ձանք մը պատահելու ըլլայ , իմ
ճերմակ մազերս տրտմութիւնով
գերեզմանը պիտի իջեցընէք ։

ԳԼ. ԽԳ

1 Յակոբ դժուարաւ կը համոզուի Բենիամինը
խրկելու ։ 15 Յովսէփ իր եղբայրները կ'ըն-
դունի . 31 անոնց խնճոյք մը կ'ընէ ։

1 Եւ սովը սաստկացաւ երկրին
2 մէջ ։ Ու եղաւ որ երբ Եգիպ-
տոսէն բերած պաշարնին կերան
հատցուցին , հայրերնին ըսաւ ա-
նոնց . Գացէ՛ք նորէն մեզի քիչ մը
3 ուտելի՛ք ծախու առէք ։ Եւ Յու-
դան զրուցեց անոր ըսելով . Ան
մարդը մեզի հաստատ վկայու-
թեամբ խօսելով՝ ըսաւ . Թէ որ
ձեր եղբայրը հետերնիդ չըլլայ ,
4 իմ երեսս պիտի չտեսնէք ։ Թէ որ
մեր եղբայրը մեզի հետ խրկես ,
կ'իջնենք ու քեզի ուտելիք ծախու
5 կ'առնենք . Բայց թէ որ չխրկես ,
չենք իջներ . ինչու որ ան մարդը
ըսաւ մեզի . Թէ որ ձեր եղբայրը
հետերնիդ չըլլայ , իմ երեսս պիտի
6 չտեսնէք ։ Եւ Իսրայէլը ըսաւ .
Ինչո՞ւ համար չարութիւն ըրիք ին-
ծի՝ ան մարդուն իմացընելով թէ
7 ուրիշ եղբայր ունիք ։ Եւ անոնք
ըսին . Ան մարդը մեզի համար ու
մեր ազգականներուն համար ճշդիւ
հարցուց՝ ըսելով . Ձեր հայրը տա-
կաւին ո՞ղջ է , ուրիշ եղբայր ու-
նի՞ք . և մենք աս խօսքերուն հա-
մեմատ պատասխան տուինք անոր .
արդեօք մենք կրնայի՞նք գիտնալ ,
որ անիկայ պիտի ըսէ թէ՝ Ձեր եղ-
8 բայրը իջեցուցէ՛ք ։ Եւ Յուդան
իր հօրը Իսրայէլին ըսաւ . Տղան
ինծի հետ խրկէ , ու ելլենք եր-
թանք , որ ողջ մնանք ու չմեռ-
նինք , մենք ալ՝ դուն ալ՝ և մեր
9 ընտանիքներն ալ ։ Ես երաշխաւոր
կ'ըլլամ անոր համար . զանիկայ իմ
ձեռքէս պահանջէ . թէ որ անի-

Յոբ. ԼԶ. 8, 9 ; Ովս. Ե. 15 ; Առակ. ԻԱ. 13 ; Մատ. Է. 2 ; Գլ. ԼԷ. 21 ; Գլ. Թ. 5 ; Թագ. Բ. 32 ; Բ Մն. ԻԴ. 22 ; Սաղ. Թ. 12 ; Ղու. ԺԱ. 50, 51 ; Մատ. Ե. 44 ; Հռով. ԺԲ. 17, 20, 21 ; Տես Գլ. ԽԳ. 21 ; Հմր 7 ; Հմր 15, 19, 20 ; Գլ. ԼԴ. 10 ;

Ն. Ք. ԶՌ. 1707 — Տես Գլ. ԽԳ. 21 ; Գլ. ԽԴ. 14 ; Հմր 13 ; Գլ. ԼԷ. 33 ; ԽԴ. 28 ; Հմր 4 ; Գլ. ԽԴ. 29 ; Գլ. ԼԷ. 35 ; ԽԴ. 31 ; Գլ. ԽԱ. 54, 57 ; Գլ. ԽԲ. 20 ; ԽԴ. 23 ; Գլ. ԽԴ. 32 ; Փիլիմ. 18, 19 ;

Ն. Ք. ԳՔ.
1707

կայ քեզի չբերեմ, ու քու առջեւդ
չկայնեցընեմ, յաւիտեան քեզի
10 յանցաւոր ըլլամ։ Քանզի թէ որ
չյապաղէինք, մինչեւ հիմա երկրորդ
11 անգամ դարձած կ՚ըլլայինք։ Եւ
անոնց հայրը Իսրայէլ ըսաւ անոնց.
Եթէ այդպէս է, հիմա աս ըրէք.
Ձեր ամաններուն մէջը երկրիս ամե-
նէն աղէկ պտուղներէն առէ՛ք, ու
[բ]մարդուն ընծայ տարէք, քիչ մը
[գ]բալասան, եւ քիչ մը մեղր, հա-
մեմներ, ու զմուռս, փստուղ ու
12 նուշ. Եւ ձեռքերնիդ կրկնապա-
տիկ ստա՛կ առէք, ու ձեր քուրձե-
րուն բերանը եղած ստակը՝ [դ]որ ետ
բերուեցաւ, ձեռքերնիդ առած ետ
տարէք. գուցէ սխալմունք եղած
13 էր. Եղբայրնիդ ալ առէք, ու ե-
լէ՛ք նորէն ան մարդուն գացէք.
14 Եւ Ամենակարող Աստուածը ձեզի
շնորհք գտնել տայ ան մարդուն
առջեւ, որ ձեր միւսալ եղբայրը ու
Բենիամինը թող տայ ձեզի. եւ [ե]Ես
թէ որ անզաւակ մնալու եմ, թող
անզաւա՛կ մնամ։
15 Եւ մարդիկը առին աս ընծա-
ները, ու ձեռքերնին կրկնապատիկ
ստակ առին, նաեւ Բենիամինը, ու
ելան Եգիպտոս իջան, եւ Յով-
16 սէփին առջեւ կայնեցան։ Եւ երբ
Յովսէփ Բենիամինը անոնց հետ
տեսաւ, [զ]իր տանը վերակացուին
ըսաւ. Տո՛ւն տար աս մարդիկը, ու
[է]*պարարտ կենդանիներ" մորթէ,
եւ պատրաստէ՛. ինչու որ աս մար-
դիկը կէսօրին ինծի հետ պիտի ճա-
17 շեն։ Եւ ան մարդը Յովսէփին ը-
սածին պէս ըրաւ. ու ան մարդը
Յովսէփին տունը տարաւ մարդիկը։
18 Եւ մարդիկը վախցան Յովսէփին
տունը տարուելնուն համար. ու
ըսին. Առջի անգամին մեր քուր-
ձերուն մէջը դարձած ստակին հա-
մար կը տարուինք, որ [ը]վրանիս
յարձակի ու մեր վրայ իյնայ, մեզ
ծառաներ առնէ՝ ու մեր էշերը։
19 Եւ Յովսէփին տանը վերակացուն
եղող մարդուն մօտեցան, ու տանը
20 դրանը մէջ խօսեցան անոր, Ու
ըսին. Ո՜հ տէր, [թ]առաջ
կերակուր ծախու առնելու իջանք։
21 Ու [ժ]եղաւ որ երբ իջեւանը եկանք,
ու մեր քուրձերը բացինք, ահա՛
ամէն մէկերնուս ստակը իր քուր-
ձին բերանն էր, մեր ստակը
լման կշռքովը. եւ զանիկայ մեր
22 ձեռքովը ետ բերինք. Ու ձեռքեր-
նուս մէջ ուրիշ ստակ բերինք՝ կե-
րակուր ծախու առնելու համար.
չենք գիտեր թէ ով դրաւ մեր
23 ստակը մեր քուրձերուն մէջ. Եւ
անիկայ ըսաւ. Խաղաղութիւն
ձեզի, մի վախնաք. ձեր Աստուածը

Բ Գլ. լբ. 20։ Առակ. ժը. 16։
Գ Գլ. լէ. 25։ Երեմ. ը. 22։
Դ Գլ. խբ. 25, 35։
Ե Եսթ. դ. 16։
Զ Գլ. իդ. 2։ լթ. 4։ խդ. 1։
Է Ա Թագ. իե. 11։
* Եբր. մորթելիք.
Ը Յոբ. լ. 14։
Թ Գլ. խբ. 3, 10։
Ժ Գլ. խբ. 27, 35։

եւ ձեր հօրը Աստուածը ձեզի գանձ
տուաւ ձեր քուրձերուն մէջ. †Ես
առի ձեր ստակը"։ Եւ Շմաւոնը
դուրս հանեց անոնց։
24 Ու ան մարդը Յովսէփին տունը
տարաւ մարդիկը, եւ ջուր տուաւ
անոնց, [ի]ու իրենց ոտքերը լուա-
ցին, ու անոնց էշերուն կեր տուաւ։
25 Եւ անոնք ընծաները պատրաստե-
ցին՝ մինչեւ Յովսէփին կէսօրուան
գալը. քանզի իմացան որ իրենք
26 հոն հաց պիտի ուտեն։ Եւ երբ
Յովսէփ տունը եկաւ, իրենց ձեռ-
քը եղած ընծաները անոր մատու-
ցին տանը մէջ, ու [լ]մինչեւ գե-
տինը ծռելով անոր խոնարհութիւն
27 ըրին։ Եւ անոնց [խ]ողջութիւնը
հարցուց՝ ըսելով. Ան ձեր ծեր
հայրը՝ [ծ]որուն վրայով խօսեցաք
ինծի, աղէ՞կ է. տակաւին ո՞ղջ է։
28 Եւ ըսին. Քու ծառադ մեր հայրը
աղէկ է, տակաւին ողջ է. [կ]Եւ
ծռեցան ու խոնարհութիւն ըրին։
29 Եւ իր աչքերը վերցուց, ու [հ]իր
մօրը որդին՝ իր եղբայրը Բենիա-
մինը տեսաւ, եւ ըսաւ. Ա՞ս է
ձեր պզտիկ եղբայրը, [ձ]որուն վրա-
յով խօսեցաք ինծի. ու ըսաւ
Բենիամինին. Աստուած ողորմի՛ քե-
30 զի՝ որդեակ իմ։ Եւ Յովսէփ շու-
տով ելաւ. քանզի [ղ]իր աղիքը
գալարեցան իր եղբօրը վրայ, եւ
լալու տեղ կը փնտռէր. ու ներսի
սենեակը մտաւ, ու [ճ]հոն լացաւ։
31 Եւ լուաց իր երեսը, ու դուրս
ելաւ. եւ զսպեց ինքզինքը, ու
32 ըսաւ. [մ]Հա՛ց բերէք։ Եւ իրեն զատ,
ու անոնց զատ, եւ իրեն հետ ուտող
Եգիպտացիներուն զատ դրին.
քանզի Եգիպտացիները Եբրայե-
ցւոց հետ հաց չէին կրնար ուտել,
ինչու որ [յ]Եգիպտացիներուն զզուե-
33 լի էր։ Եւ նստան անոր առջեւ,
անդրանիկը իր անդրանկութեանը
պէս, եւ պզտիկը իր պզտիկու-
թեանը պէս. եւ մարդիկը իրարու
34 նայելով կը զարմանային։ Եւ անի-
կայ իր առջեւէն բաժիններ խրկեց
անոնց. բայց Բենիամինին բաժինը
միւսներուն բաժինէն [ն]հինգ ան-
գամ աւելի էր. եւ խմեցին, ու
[շ]անոր հետ միասին զուարթացան։

† Եբր. ձեր ստակը ինծի եկաւ։
Ի Գլ. ժը. 4։ իդ. 32։
Լ Գլ. լէ. 7, 10։
Խ Գլ. լէ. 14։
Ծ Գլ. խբ. 11, 13։
Կ Գլ. լէ. 7, 10։
Հ Գլ. լե. 17, 18։
Ձ Գլ. խբ. 13։
Ղ Գ Թագ. գ. 26։
Ճ Գլ. խբ. 24։
Մ Հմր 25։
Յ Գլ. խզ. 34։ Ել. ը. 26։
Ն Գլ. խե. 22։
Շ Անգ. ա. 6։ Յովհ. բ. 10։

ԳԼ. ԽԴ

1 Յովսէփ իր եղբայրները ճամբայէն ետ դար-
ձընելու համար հնարք կը բանեցընէ։ 14 Յու-
դային խոնարհ աղաչանքը։

1 Եւ իր տանը վերակացուին հրա-
ման ըրաւ, ըսելով. Աս մար-
դոցը քուրձերը տանել կրցած-
նուն չափ ուտելիք լեցուր, ու ա-
մէն մէկուն ստակը իր քուրձին բե-
2 րանը դիր. Եւ [ա]իմ գաւաթս՝ պզտիկին
քուրձին բերանը իմ գաւաթս՝ ար-

Ն. ք. գ. 1707 ծաթ գաւաթը ու իր պաշարին
ստակը դիր ։ Ու անիկայ Յովսէփին
ըսած խօսքին պէս ըրաւ ։
3 Եւ առաւօտուն լուսցածին պէս
մարդիկը խրկուեցան իրենք՝ ու
4 իրենց էշերը ։ Անոնք քաղաքէն
ելլելով դեռ չհեռացած Յովսէփ
իր տանը վերակացուին ըսաւ . Ե-
լի՛ր ան մարդոցը ետեւէն վազէ .
ու անոնց հասիր . և ըսէ անոնց .
Ինչո՞ւ բարիին փոխարէն չար հա-
5 տուցիք . Աս ան չէ՞ որուն մէջէն իմ
տէրս կը խմէ . ու անով կը հմայէ .
աստանկ ընելով՝ գէշութիւն ըրիք ։
6 Եւ անիկայ հասաւ անոնց . և ըսաւ
7 անոնց աս նոյն խօսքերը ։ Եւ ըսին
անոր . Ինչո՞ւ իմ տէրս աստանկ
խօսքեր կը զրուցէ . քաւ լիցի որ
քու ծառաներդ աստանկ բան մը
Ա Գլ. խգ. 21 ։ 8 ընեն ։ Ահա Ա մեր քուրձերուն բե-
րանը գտած ստակնիս Քանանու
երկրէն քեզի ետ բերինք . ուրեմն
ի՞նչպէս քու տիրոջդ տունէն ար-
ծաթ կամ ոսկի պիտի գողնանք ։
9 Քու ծառաներուդ որուն քովը որ
Բ Գլ. լա. 32 ։ գտնուի . Բ թող անիկայ մեռնի .
ու մենք ալ իմ տիրոջս ծառաներ
10 ըլլանք ։ Եւ անիկայ ըսաւ . Հիմա
ճիշդ ձեր ըսածին պէս թող ըլլայ
որուն քովը որ գտնուի , ան ինծի
ծառայ ըլլայ . ու դուք անպարտ
11 ըլլաք ։ Ուստի ամէն մէկը արտոր-
նօք իր քուրձը գետինը իջեցուց .
ու ամէն մէկը իր քուրձը բացաւ ։
12 Եւ անիկայ մեծէն սկսեց փնտռել .
ու մինչև պզտիկը նայեցաւ . և
գաւաթը Բենիամինին քուրձին
մէջ գտնուեցաւ ։
Գ Գլ. լէ. 29 . 34 ։ Թուոց. ժդ. 6 ։ Բ Թագ. ա. 11 ։ 13 Ան ատենը Գ իրենց հանդերձները
պատռեցին . և ամէն մէկը իր էշը
բեռցուց . ու քաղաքը դարձան ։
14 Եւ Յուդա ու անոր եղբայրները
Յովսէփին տունը եկան . և անիկայ
Դ Գլ. լէ. 7 ։ տակաւին հոն էր , ու Դ անոր առջևը
15 գետինը ինկան ։ Եւ Յովսէփ ը-
սաւ անոնց . Աս ի՞նչ բան է որ ը-
րիք . չէ՞ք գիտեր որ ինծի պէս
Ե Հմր 5 ։ 16 մարդ մը անշուշտ Ե կը հմայէ ։ Եւ
Յուդան ըսաւ . Իմ տիրոջս ի՞նչ
ըսենք . ի՞նչ խօսինք . կամ ի՞նչ-
պէս արդարացընենք ինքզինքնիս .
Աստուած քու ծառաներուդ յան-
Զ Հմր 9 ։ ցանքը բռնեց . Զ ահա մենք մեր
տիրոջը ծառաներ ենք . մենք ալ՝
անիկա ալ՝ որուն քովը գաւաթը
17 գտնուեցաւ ։ Եւ անիկայ ըսաւ .
Է Առակ. ժէ. 15 ։ Է Քաւ լիցի՝ որ ես այդպէս ընեմ .
հապա ան մարդը՝ որուն քովը գա-
ւաթը գտնուեցաւ , անիկայ ինծի
ծառայ ըլլայ , ու դուք խաղաղու-
թեամբ ձեր հօրը ելէք ։
18 Ան ատենը Յուդան մօտեցաւ ա-
նոր՝ ու ըսաւ . Ո՛հ տէր իմ , շնորհք
ըրէ՝ թող քու ծառադ խօսք մը Ն. ք. գ. Քր 1707
խօսի իմ տիրոջս ականջներուն , ու
ծառայիդ վրայ Ը քու բարկութիւնդ Ը Գլ. ժը. 30 . 32 ։ Ել. լբ. 22 ։
չբորբոքի . ինչու որ դուն Փարա-
19 ւոնին պէս ես ։ Իմ տէրս իր ծա-
ռաներուն հարցուց՝ ըսելով . Հայր
20 կամ եղբայր ունի՞ք ։ Եւ մենք ը-
սինք մեր տիրոջը թէ ծեր հայր մը
ունինք . և Թ անիկայ իր ծերու- Թ Գլ. լէ. 3 ։
թեան ատենը ծնած պզտիկ որդի
մը ունի , ու անոր եղբայրը մեռած
է . և միայն անիկայ իր մօրմէն
մնաց , ու անոր հայրը կը սիրէ զա-
21 նիկայ ։ Եւ քու ծառաներուդ ը-
սիր . Ժ Ինծի իջեցուցէք անիկայ . Ժ Գլ. խբ. 15 . 20 ։
22 որ ԺԱ տեսնեմ ։ Եւ իմ տիրոջս ըսինք . ԺԱ Եբր. աչքս անոր վրայ դնեմ ։
Տղան իր հայրը չկրնար ձգել . քանզի
թէ որ իր հայրը ձգելու ըլլայ ,
23 անիկայ պիտի մեռնի ։ Եւ քու
ծառաներուդ ըսիր . ԺԲ թէ որ ձեր ԺԲ Գլ. խգ. 3 . 5 ։
պզտիկ եղբայրը ձեզի հետ չիջնէ ,
իմ երեսս մէյմըն ալ պիտի չտես-
24 նէք ։ Ու երբոր քու ծառայիդ իմ
հօրս ելանք իմ տիրոջս խօսքերը
25 պատմեցինք անոր ։ Եւ ԺԳ մեր հայրը ԺԳ Գլ. խգ. 2 ։
ըսաւ . Գացէք նորէն , մեզի
քիչ մը կերակուր ծախու առէք ։
26 Եւ մենք ըսինք . Չենք կրնար իջ-
նել . թէ որ մեր պզտիկ եղբայրը
մեր հետը ըլլայ , ան ատենը կ'իջ-
նենք ինչու որ պիտի չկրնանք տես-
նել ան մարդուն երեսը , թէ որ մեր
պզտիկ եղբայրը մեր հետը չըլլայ ։
27 Եւ քու ծառադ իմ հայրս ըսաւ
մեզի . Դուք գիտէք որ ԺԴ իմ կնիկս ԺԴ Գլ. խզ. 19 ։
28 երկու որդի ծնաւ ինծի ։ Եւ մէկը
քովէս ելաւ . ու ես ըսի . ԺԵ Անշուշտ ԺԵ Գլ. լէ. 33 ։
գազանէ մը փառատուած է , ու
29 մինչև հիմա զինքը չտեսայ ։ Եւ
թէ որ ԺԶ ասիկայ ալ քովէս առ- ԺԶ Գլ. խբ. 36 . 38 ։
նէք , ու անոր փորձանք մը պատա-
հի , իմ ճերմակ մազերս տրտմու-
թիւնով գերեզմանը պիտի իջե-
30 ցընէք ։ Ուստի հիմա՝ երբոր քու
ծառայիդ իմ հօրս երթամ , ու
տղան մեր հետը չըլլայ , ԺԷ անոր ԺԷ Ա Թագ. ժը. 1 ։
հոգին տղուն հոգիին հետ կապուած
31 ըլլալով . Երբոր տեսնէ թէ տղան
մեր հետը չէ . պիտի մեռնի . և ծա-
ռաներդ՝ քու ծառայիդ մեր հօրը
ճերմակ մազերը տրտմութիւնով
32 գերեզմանը պիտի իջեցընենք ։ Ին-
չու որ ծառադ՝ տղուն համար իմ
հօրս երաշխաւոր եղայ՝ ըսելով .
ԺԸ Թէ որ ես անիկայ քեզի չբերեմ , ԺԸ Գլ. խգ. 9 ։
իմ հօրս յաւիտեան յանցաւոր ըլ-
33 լամ ։ Ուստի հիմա կ'աղաչեմ քեզի ,
ԺԹ տղուն տեղը՝ ծառադ իմ տիրոջս ԺԹ Ել. լբ. 32 ։
ծառայ մնայ , և տղան իր եղբայրնե-
34 րուն հետ ելլէ . Քանզի թէ որ
տղան իմ հետս չըլլայ . ինչպէս
ելլեմ իմ հօրս . չըլլայ որ իմ հօրս
գալու փորձանքը տեսնեմ ։

Ն. Ք. ԳՔ. 1707

## ԳԼ. ԽԵ

1 Յովսէփ զինքը իր եղբայրներուն կը ճանչցընէ. 5 անցած բաները Աստուծոյ նախախնամութեանը տալով՝ կը մխիթարէ զանոնք. 9 ու կը խրկէ որ իր հայրը բերեն. 16 Փարաւոն ալ բանին կը հաճի. 21 Յովսէփ անոնց ճամբուն պաշարը կու տայ, ու զանոնք կը յորդորէ որ խռովութիւն չունենան մէջերնին. 25 Յակոբ իր որդւոյն լուրը առնելով՝ կը զօրանայ։

1 Եւ Յովսէփ չկրցաւ զսպել ինք-
զինքը բոլոր իր քովը կայնողնե-
րուն առջեւ, ու պոռաց. Քովէս
դուրս հանեցէք բոլոր մարդիկը. եւ
երբ Յովսէփ ինքզինքը իր եղբայր-
ներուն ճանչցուց, քովը մարդ մը
2 չկեցաւ։ Եւ [ա]ձայնը վերցնելով
լացաւ. ու Եգիպտացիք լսեցին, ու
3 Փարաւոնին տունն ալ լսեց։ Եւ
Յովսէփ ըսաւ իր եղբայրներուն.
[բ]Ես Յովսէփն եմ. իմ հայրս տա-
կաւին ո՞ղջ է. ու եղբայրները չէին
կրնար պատասխան տալ անոր. ին-
չու որ անոր առջեւ [գ]ապշած մնա-
4 ցին։ Եւ Յովսէփ ըսաւ իր եղբայր-
ներուն. Ինծի մօտ եկէք. անոնք
ալ մօտ եկան. եւ ըսաւ. Ես ձեր
եղբայրը Յովսէփն եմ, [դ]որ Եգիպ-
5 տոս ծախեցիք։ Ուստի
հիմա զիս հոս ծախելնուդ համար
[ե]մի՛ վշտանաք, ու ձեզի ծանր չե-
րեւնայ. [զ]ինչու որ Աստուած խըր-
կեց զիս ձեր առջեւէն՝ կեանք պա-
6 հելու համար։ Քանզի երկրիս վրայ
սովին երկրորդ տարին է աս. եւ
տակաւին հինգ տարի կայ՝ որ ոչ
վարուցան, ո՛չ ալ հունձք պիտի
7 ըլլայ։ Եւ Աստուած զիս ձեր առ-
ջեւէն խրկեց՝ որ երկրի վրայ ձեզի
սերունդ պահէ, եւ մեծ ազատու-
8 թիւնով ձեզ ապրեցընէ։ Եւ հիմա
զիս հոս խրկողը դուք չէք, հապա
Աստուած է. ու [է]զիս Փարաւոնին
հայր՝ եւ իր բոլոր տանը տէր՝ ու
Եգիպտոսի բոլոր երկրին իշխան
9 դրաւ։ Շուտով իմ հօրս ելէք,
ու ըսէք անոր. Այսպէս կ՚ըսէ քու
Յովսէփ որդիդ. Աստուած բոլոր
Եգիպտոսին տէր ըրաւ զիս. չու-
10 շանաս՝ ինծի իջնես. Եւ [ը]Գեսեմի
երկրին մէջ պիտի բնակիս, որ ին-
ծի մօտ ըլլաս, դուն ու քու որ-
դիքդ՝ եւ քու որդւոցդ որդիքը՝ եւ
հօտերդ՝ ու արջառներդ՝ եւ քու բո-
11 լոր ունեցածդ. Եւ հոն քեզ պիտի
սնուցանեմ. ինչու որ տակաւին
հինգ տարի սով կայ. չըլլայ որ
դուն՝ ու քու տունդ՝ եւ քու բոլոր
ունեցածդ չքաւորութիւն քաշէք։
12 Եւ ահա ձեր աչքերը ու իմ եղբօրս
Բենիամինին աչքերը կը տեսնեն՝ որ
13 [թ]ձեզի խօսողը իմ բերանս է։ Ու
Եգիպտոսի մէջ իմ ունեցած բոլոր
փառքս, ու ձեր բոլոր տեսածը

[ա] Թուոց. ժդ. 1։
[բ] Գործ. է. 13։
[գ] Յոբ. դ. 5։ Իս. 15։ Մատ. ժդ. 26։ Մար. զ. 50։
[դ] Գլ. լէ. 28։
[ե] Ես. խ. 2։ բ Կոր. բ. 7։
[զ] Գլ. ծ. 20։ Սաղ. ճե. 16, 17։ Յես. բ Թագ. ժզ. 10, 11։ Գործ. դ. 24։
[է] Գլ. խա. 43։ Գործ. է. 10։ Յոբ. իթ. 16։
[ը] Գլ. խէ. 1։
[թ] Գլ. խբ. 23։

պատմեցէ՛ք իմ հօրս. եւ շուտով
14 [ժ]իմ հայրս հոս իջեցուցէք։ Եւ իր
եղբօրը Բենիամինին պարանոցին
վրայ ինկաւ՝ ու լացաւ. Բենիամինն
ալ անոր պարանոցին վրայ լացաւ։
15 Եւ իր բոլոր եղբայրները համբու-
րեց, ու անոնց վրայ լացաւ. եւ ան-
կէ ետքը իր եղբայրները իրեն խօ-
սեցան։
16 Եւ աս լուրը Փարաւոնին տանը
մէջ լսուեցաւ՝ թէ Յովսէփին եղ-
բայրները եկեր են. եւ Փարաւոնին
ու անոր ծառաներուն [ի]հաճելի ե-
17 ղաւ։ Եւ Փարաւոն ըսաւ Յովսէ-
փին. Քու եղբայրներուդ ըսէ. Ա՛ս
ըրէք. ձեր անասունները բեռցու-
ցէ՛ք, ու Քանանու երկիրը գացէք.
18 Եւ ձեր հայրը՝ ու ձեր ընտանիքները
առէ՛ք, ու ինծի եկէք. եւ Եգիպ-
տոսի երկրին աղէկը ձեզի տամ,
ու [լ]երկրին պարարտութենէն ու-
19 տէք։ Եւ քեզի հրաման եղաւ.
Աս ըրէք. ձեր տղաքներուն համար
ու ձեր կնիկներուն համար Եգիպ-
տոսի երկրէն կառքեր առէք ձեզի,
20 եւ ձեր հայրը բերէ՛ք՝ ու եկէ՛ք։ Եւ
ձեր կարասիքին *մի՛ նայիք". ինչու
որ բոլոր Եգիպտոսի երկրին բարի-
քը ձերն է։
21 Եւ Իսրայէլին որդիները անանկ
ըրին. եւ Յովսէփ անոնց կառքեր
տուաւ Փարաւոնին [խ]խօսքին պէս,
ու ճամբու համար պաշար տուաւ
22 անոնց։ Անոնց ամէն մէկուն զատ
զատ փոխելու հանդերձներ տուաւ,
բայց Բենիամինին իրեք հարիւր կտոր
արծաթ՝ ու [ծ]հինգ ձեռք փոխելու
23 հանդերձ տուաւ։ Եւ իր հօրը ա-
սոր պէս բաներ խրկեց. տասը էշ
Եգիպտոսի բարիքներով բեռցած՝
եւ տասը էգ էշ ցորենով ու հացով
եւ ուտելիքներով բեռցած՝ իր հօրը
24 ճամբորդութեանը համար։ Այս-
պէս իր եղբայրները խրկեց, ու գա-
ցին. եւ ըսաւ անոնց. Ճամբուն
մէջ չխռովիք։
25 Եւ անոնք Եգիպտոսէն ելան, ու
դէպ 'ի Քանանու երկիրը իրենց հօ-
26 րը Յակոբին գացին. Եւ անոր պատ-
մեցին՝ ըսելով. Յովսէփը տակա-
ւին ողջ է, ու Եգիպտոսի բոլոր երկ-
րին իշխանը անիկայ է։ [կ]Եւ Յակո-
բին սիրտը մարեցաւ. քանզի անոնց
27 չհաւատաց։ Եւ անոր պատմեցին
Յովսէփին բոլոր խօսքերը որ իրենց
ըսեր էր, ու երբոր տեսաւ Յովսէ-
փին խրկած կառքերը զինքը տա-
նելու համար, անոնց հօրը Յակո-
28 բին հոգին ողջընցաւ։ Եւ Իսրա-
յէլ ըսաւ. Բաւական է. իմ որ-
դիս Յովսէփը տակաւին ողջ է.
երթամ ու մեռնելէս առաջ տես-
նեմ անիկայ։

Ն. Ք. ԳՔ. 1707

[ժ] Գործ. է. 14։
[ի] Գլ. խա. 37։
[լ] Գլ. իէ. 28։ Թուոց. ժը. 12, 29։
* Եբր. ձեր աչքը չխընայէ.
[խ] Թուոց. գ. 16։
[ծ] Գլ. խգ. 34։
[կ] Յոբ. իթ. 24։ Սաղ. ճկզ. 1։ Ղուկ. իդ. 11, 41։

Ն.Ք. ԳՔ.
1706

## ԳԼ. ԽԶ

1 Յակոբ Բերսաբէէի մէջ Աստուծմէ կը քաջալերուի ։ 5 Անկէ իր ընտանիքովը Եգիպտոս կ'երթայ ։ 8 Եգիպտոս գացող իր ընտանեացը համրանքը ։ 29 Յովսէփ իր հայրը Յակոբը դիմաւորելու կ'ելլէ ։ 31 Կը սորվեցընէ իր եղբայրներուն՝ թէ ինչ պատասխան պիտի տան Փարաւոնին ։

1 Եւ Իսրայէլ իր բոլոր ունեցածովը ճամբայ ելաւ , ու ա Բերսաբէէ եկաւ . և բ իր հօրը Իսահակին
2 Աստուծոյն զոհեր մատուց ։ Ու Աստուած գ գիշերուան տեսիլքի մէջ խօսեցաւ Իսրայէլին՝ ու ըսաւ . Յակոբ՝ Յակոբ . և անիկայ ըսաւ .
3 Ահա ես հոս եմ ։ Եւ ըսաւ անոր . Ես եմ Աստուած՝ դ քու հօրդ Աստուածը . Եգիպտոս իջնելու մի վախնար . ինչու որ ե հոն մեծ ազգ
4 մը պիտի ընեմ քեզ . զ Ես քեզի հետ Եգիպտոս պիտի իջնեմ , նաև է քեզ անշուշտ պիտի հանեմ , ու ը Յովսէփ պիտի դնէ իր ձեռքը քու
5 աչքերուդ վրայ ։ Եւ թ Յակոբ ելաւ Բերսաբէէէն . ու Իսրայէլին որդիները տարին իրենց հայրը Յակոբը՝ ու իրենց տղաքները՝ և իրենց կնիկները այն կառքերով , ժ որոնք որ Փարաւոն խրկեց զանիկայ տանելու
6 համար ։ Եւ առին իրենց անասունները ու իրենց ստացուածքը՝ որ Քանանու երկրին մէջ ստացեր էին , ու Եգիպտոս եկան՝ ի Յակոբը ու անոր բոլոր սերունդը իրեն հետ .
7 Իր որդիները ու իր որդւոցը որդիները իր հետը՝ իր աղջիկները ու իր որդւոցը աղջիկները՝ և իր բոլոր սերունդը իր հետը Եգիպտոս բերաւ ։

8 Եւ լ Ասոնք են Իսրայէլի որդւոցը անունները որ Եգիպտոս եկան . Յակոբ ու անոր որդիքը . խ Յա-
9 կոբին անդրանիկը Ռուբէն . Եւ Ռուբէնին որդիքը՝ Ենովք , ու Փաղղուս , և Եսրոն ու Քարմի ։
10 Եւ ծ Շմաւոնին որդիքը՝ Յամուէլ , ու Յամին , և Ոհադ , ու Յաքին , և կ Սահառ , ու Քանանացի կնկանը
11 որդին Սաւուղ ։ Եւ հ Ղևիին որդիքը՝ Գերսոն , Կահաթ ու Մերարի ։
12 Եւ ձ Յուդային որդիքը՝ Էր , ու Օնան , և Սելոմ , ու Փարէս և Զարա . բայց ղ Էր ու Օնան Քանանու երկրին մէջ մեռան . և ճ Փարեսին որդիքը՝ Եսրոն ու Համուլ ։
13 Եւ մ Իսաքարին որդիքը՝ Թովղայ , ու Փուա , և * Յասուբ ու
14 Սամրոն ։ Եւ Զաբուղոնին որդիքը՝ Սարեդ , ու Ելոն և Յաղէլ ։
15 Ասոնք են Լիային որդիքը , որոնք Միջագետին մէջ ծնաւ Յակոբին , ու անոր Դինա աղջիկը . անոր բոլոր որդիները ու աղջիկները երեսունուիրեք հոգի էին ։
16 Եւ Գադին որդիքը՝ յ Սափոն , ու Անգի , Սունի , և Եսբօն , Էրի , ու Արոդի
17 և Արելի ։ Եւ ն Ասերին որդիքը՝ Յեմնա , ու Յեսուա , և Յեսուի , ու Բարիա , և անոնց քոյրը Սարա . և Բարիային որդիքը՝ Քաբեր ու
18 Մեղքիէլ ։ շ Ասոնք են Զելփային որդիքը՝ ո որն որ Լաբան իր Լիա աղջկանը տուաւ . և անիկայ ծնաւ ասոնք Յակոբին տասնուվեց հոգի ։
19 չ Յակոբին կնկանը Ռաքելին որդի-
20 քը՝ Յովսէփ ու Բենիամին ։ պ Եւ Յովսէփին՝ Եգիպտոսի երկրին մէջ Մանասէն ու Եփրեմը ծնան , որոնք Արեգ քաղաքին քուրմը եղող Պետափրեային աղջիկը Ասանէթը ծը-
21 նաւ անոր ։ ջ Եւ Բենիամինին որդիքը՝ Բաղա , ու Բոքոր , և Ասբէլ , Գերա , ու Նէեման , ռ Էհի , ու Ռովս , ս Մուփիմ , և Ոփիմ ու
22 Արեդ ։ Ասոնք են Ռաքելին որդիքը՝ որոնք ծնան Յակոբին , ամէնը
23 տասնուչորս հոգի ։ վ Եւ Դանին
24 որդիքը՝ տ Հուսիմ ։ ր Եւ Նեփթաղիմին որդիքը՝ Յասիէլ , ու
25 Գունի , և Յասեր ու Սիլլէմ ։ ց Ասոնք են Բաղղային որդիքը՝ ւ որն որ Լաբան իր Ռաքէլ աղջկանը տուաւ ու անիկայ Յակոբին ասոնք ծնաւ , ու ամէնը եօթը հոգի
26 էին ։ փ Յակոբին հետ Եգիպտոս եկող բոլոր հոգիները , որ ք անոր երանքէն ելած էին , Յակոբին որդւոցը կնիկներէն զատ՝ ամէնը
27 վաթսունուվեց հոգի էին ։ Եւ Յովսէփին որդիքը՝ որ Եգիպտոսի մէջ անոր ծնան , երկու հոգի էին . Եգիպտոս գացող Յակոբին տանը ա բոլոր հոգիները եօթանասուն էին ։

28 Եւ անիկայ Յուդան իր առջևէն խրկեց Յովսէփին , բ որ Գեսեմը ցուցընէ իրեն . և անոնք գ Գեսեմի եր-
29 կիրը եկան ։ Եւ Յովսէփ իր կառքը պատրաստեց , ու իր հայրը Իսրայէլը դիմաւորելու համար Գեսեմը ելաւ . և երբ անոր դէմը ելաւ , բ անոր պարանոցին վրայ ինկաւ , ու խել մը ատեն անոր պարանոցին վը-
30 րայ լացաւ ։ Եւ Իսրայէլը ըսաւ Յովսէփին . գ Հիմա քու երեսդ տեսնելէս ետքը թող մեռնիմ . ին-
31 չու որ տակաւին ողջ ես ։ Եւ Յովսէփ իր եղբայրներուն ու իր հօրը տանը ըսաւ . դ Ելլեմ , և Փարաւոնին պատմեմ , ու ըսեմ անոր . Իմ եղբայրներս ու իմ հօրս ընտանիքը՝ որ Քանանու երկրին մէջն էին , ին-
32 ծի եկան . Եւ այն մարդիկը հովիւներ են . ինչու որ խաշանց տէր են . և իրենց հօտերը , ու իրենց արջառները և իրենց բոլոր ունեցածը
33 բերին ։ Եւ ըլլայ որ երբ Փարաւոն

Ն. Ք. ԳՔ. 1706

ա Գլ. իա. 31, 33 ։ իը. 10 ։
բ Գլ. իզ. 24, 25 ։ իը. 13 ։ լա. 42 ։
գ Գլ. ժե. 1 ։ Յոբ. լգ. 14, 15 ։
դ Գլ. իը. 13 ։
ե Գլ. ժբ. 2 ։ բ Օր. իզ. 5 ։
զ Գլ. իը. 15 ։ խը. 21 ։
է Գլ. ժե. 16 ։ ծ. 13, 24, 25 ։ Ել. գ. 8 ։
ը Գլ. ծ. 1 ։
թ Գոր. է. 15 ։
ժ Գլ. խե. 19, 21 ։
ի բ Օր. իզ. 5 ։ Յես. իդ. 4 ։ Սաղ. ճե. 23 ։ Ես. ծբ. 4 ։
լ Ել. ա. 1 ։ զ. 14 ։
խ Թուոց. իզ. 5 ։ ա Մն. ե. 1 ։
ծ Ել. զ. 15 ։ ա Մն. դ. 24 ։
կ ա Մն. դ. 24 ։
հ ա Մն. զ. 1, 16 ։
ձ ա Մն. բ. 3 ։ դ. 21 ։
ղ Գլ. լը. 3, 7, 10 ։
ճ Գլ. լը. 29 ։ ա Մն. բ. 5 ։
մ ա Մն. է. 1 ։
* Կամ՝ Յոբ

յ Թուոց. իզ. 15, Ա։
ն ա Մն. է. 30 ։
շ Գլ. լ. 10 ։
ո Գլ. իթ. 24 ։
չ Գլ. խդ. 27 ։
պ Գլ. խա. 50 ։
ջ ա Մն. է. 6 ։ ը. 1 ։
ռ Թուոց. իզ. 38 ։
ս Թուոց. իզ. 39 ։ ա Մն. է. 12 ։
վ ա Մն. է. 12 ։
տ Թուոց. իզ. 42 ։
ր ա Մն. է. 13 ։
ց Գլ. լ. 5, 7 ։
ւ Գլ. իթ. 29 ։
փ Ել. ա. 5 ։
ք Գլ. լե. 11 ։
ա բ Օր. ժ. 22 ։ Տճ. Գոր. է. 14 ։
$ Գլ. լա. 21 ։
գ Գլ. խէ. 1 ։
բ Գլ. խե. 14 ։
գ Տճ. Ղու. բ. 29, 30 ։
դ Գլ. խէ. 1 ։

Ն·Ք·գՔ· 1706

ե Գլ·խե·2, 3 ։
զ Գլ·լ·35 ; լդ·5 ; լէ·12 ։
է Հմր 32 ։
ը Գլ·խգ·32 ; Ել·ը·26 ։

ձեզ կանչէ , ու ըսէ թէ՝ [ե] Ի՞նչ է
34 արհեստնիդ . Ըսէք . Քու ծառա-
ներդ [զ] մեր մանկութենէն մինչև
հիմա՝ մենք ալ , մեր հայրերն ալ
[է] խաշանց տէր ենք . որ Գեսեմի
երկրին մէջ բնակիք . ինչու որ
ամէն հովիւ Եգիպտացւոց առջևը
[ը] զզարշելի է ։

## ԳԼ. ԽԷ

1 Յովսէփ իր եղբայրներուն հինգը , 7 ու իր հայրը Փարաւոնին կը ներկայացընէ . 11 անոնց բնակութիւն ու ապրուստ կու տայ ։ 13 Բոլոր Եգիպտացւոց ստակը , 16 անասունները , 18 ու կալուածքը Փարաւոնին համար ծախու կ'առնէ ։ 22 Քուրմերուն երկիրը ծախու չառներ ։ 23 Երկրի արմտիքներուն հինգերորդ մասը թագաւորին տալու պայմանով՝ երկիրը Եգիպտացւոց կու տայ ։ 28 Յակոբին տարիքը ։ 29 Անիկայ կ'երդմնցընէ Յովսէփը որ զինքը իր հայրերուն հետ թաղէ ։

ա Գլ·խզ·31 ։
բ Գլ·խե·10 ; խզ·28 ։
գ Գոր·է·13 ։
դ Գլ·խզ·33 ։
ե Գլ·խզ·34 ։
զ Գլ·ժե·13 ; բ Օր·իզ·5 ։
է Գլ·խգ·1 ; Գոր·է·11 ։
ը Գլ·խզ·34 ։
թ Գլ·ի·15 ։
ժ Հմր 4 ։
ի Եբր·ժա·9, 13 ; Սաղ·լթ·12 ։
լ Յոբ·ժդ·1 ։
խ Գլ·իե·7 ; լե·28 ։

1 Եւ Յովսէփ [ա] եկաւ ու պատմեց
Փարաւոնին՝ ու ըսաւ . Իմ հայրս
ու եղբայրներս , և անոնց հօտերը
ու արջառները , և անոնց բոլոր ու-
նեցածը եկան Քանանու երկրէն , և
2 ահա [բ] Գեսեմի երկիրն են ։ Եւ իր
եղբայրներուն մէջէն հինգ մարդ ա-
ռաւ , ու [գ] զանոնք Փարաւոնին
3 առջևը ներկայացուց ։ Եւ Փա-
րաւոն ըսաւ անոր եղբայրներուն .
[դ] Ի՞նչ է ձեր արհեստը . և անոնք
Փարաւոնին ըսին . [ե] Քու ծառա-
ներդ հովիւներ ենք , մենք ալ՝ մեր
4 հայրերն ալ ։ Նաև ըսին Փարաւո-
նին . [զ] Այս երկրին մէջ պանդխտա-
նալու եկանք . վասն զի [է] Քանանու
երկրին մէջ սովը սաստկանալուն
համար , քու ծառաներուդ հօտե-
րուն արծելիք չկայ . ուստի հիմա
շնորհէ ըրէ՝ ծառաներդ [ը] Գեսեմի
5 երկրին մէջ բնակինք ։ Եւ Փա-
րաւոն խօսեցաւ Յովսէփին՝ ըսե-
լով . Քու հայրդ ու եղբայրներդ
6 քեզի եկան . [թ] Եգիպտոսի երկիրը
առջևդ է . քու հայրդ ու եղբայր-
ներդ երկրին ամենէն աղէկ տեղը
բնակեցուր . [ժ] Գեսեմի երկրին մէջ
թող բնակին . և թէ որ անոնց մէ-
ջը ճարպիկ մարդիկ ըլլալը գիտես ,
զանոնք իմ հօտերուս վրայ վերա-
կացու ըրէ ։
7 Եւ Յովսէփ իր հայրը Յակոբը
բերաւ , ու Փարաւոնին առջևը
հանեց . և Յակոբ օրհնեց Փա-
8 րաւոնը ։ Եւ Փարաւոն ըսաւ
Յակոբին . Քու կենացդ տարի-
9 ներուն օրերը որչափ են ։ Եւ
Յակոբ ըսաւ Փարաւոնին . [ի] Իմ
պանդխտութեանս տարիներուն օ-
րերը հարիւր երսուն տարի է . [լ] Իմ
կենացս տարիներուն օրերը քիչ ու
ցաւով եղան , ու [խ] իմ հայրերուս
պանդխտութեան օրերուն մէջ ե-
ղած իրենց կենացը տարիներուն
10 օրերուն չհասան ։ Եւ Յակոբ
[ծ] օրհնեց Փարաւոնը , ու դուրս ելաւ
Փարաւոնին առջևէն ։
11 Եւ Յովսէփ բնակեցուց իր հայ-
րը ու եղբայրները , և անոնց կա-
լուածք տուաւ Եգիպտոսի երկրին
ամենէն աղէկ կողմը՝ [կ] Ռամեսէսի
երկրին մէջ , [հ] ինչպէս որ Փարաւոն
12 հրամայեր էր ։ Եւ Յովսէփ իր
հայրը ու եղբայրները և իր հօրը
բոլոր տունը [ձ] անոնց ընտանիքնե-
րուն համեմատ հացով կը սնու-
ցանէր ։
13 Եւ բոլոր երկրին մէջ հաց չկար .
ինչու որ սովը խիստ սաստկացաւ .
[ղ] ու Եգիպտոսի երկիրը և Քանանու
երկիրը սովին պատճառովը նուա-
14 ղեցաւ ։ [ճ] Եւ Յովսէփ պաշար ծախու
առնողներէն՝ Եգիպտոսի երկրին
մէջ ու Քանանու երկրին մէջ
գտնուած բոլոր ստակը ժողվեց . և
Յովսէփ Փարաւոնին տունը տա-
15 րաւ ստակը ։ Ու երբոր Եգիպտոսի 1702
երկրին՝ ու Քանանու երկրին մէջ
ստակը հատաւ , բոլոր Եգիպտա-
ցիները եկան Յովսէփին՝ ու ըսին .
Մեզի հաց տուր . քանզի ստակը
հատնելուն համար [մ] ինչու մեռնինք
16 քու առջևդ ։ Եւ Յովսէփ ըսաւ .
Ձեր անասունները բերէք , և թէ
որ ստակ չկայ , ձեր անասուններուն
17 փոխարէն տամ ձեզի ։ Եւ անոնք
իրենց անասունները Յովսէփին բե-
րին , և Յովսէփ հաց տուաւ անոնց՝
ձիերուն փոխարէն , ու ոչխարնե-
րուն փոխարէն , և արջառներուն
փոխարէն , ու էշերուն փոխարէն .
և ան տարին զանոնք հացով կե-
րակրեց՝ իրենց բոլոր անասուննե-
րուն փոխարէն ։
18 Ու երբոր լմնցաւ ան տարին ,
հետևեալ տարին եկան անոր՝ ու
ըսին . Մեր տիրոջմէն չենք պա-
հեր որ ստակը հատաւ , և մեր ա-
նասուններն ալ մեր տիրոջը եղաւ .
ալ բան մը չմնաց մեր տիրոջը
առջևը , բայց մեր անձերը ու
19 երկիրը . Ինչու համար քու աչքիդ
առջևը մեռնինք , մենք՝ ու մեր
երկիրը . մեզ՝ ու մեր երկիրը հա-
ցով ծախու առ . և մենք մեր երկի-
րովը Փարաւոնին ծառաներ ըլլանք .
և սերմ տուր մեզի՝ որ ապրինք ու
չմեռնինք , և երկիրը ամայի չըլլայ ։
20 Եւ Յովսէփ բոլոր Եգիպտոսի երկի- 1701
րը Փարաւոնին համար ծախու ա-
ռաւ . քանզի Եգիպտացւոց վրայ
սովը սաստիկ ըլլալուն համար՝
անոնց ամէն մէկը իր արտը ծա-
խեց , ու երկիրը Փարաւոնին եղաւ ։
21 Եւ Եգիպտոսի սահմանին մէկ
ծայրէն մինչև մէկալ ծայրը՝ ժողո-
վուրդը * քաղաքէ քաղաք" փո-

Ն·Ք·գՔ· 1706
ծ Հմր 7 ։
կ Ել·ա·11 ; ժբ·37 ։
հ Հմր 6 ։
ձ Գլ·ծ·21 ։
ղ Գլ·խա·30 ; Գոր·է·11 ։
ճ Գլ·խա·56 ։
մ Հմր 19 ։
* Եբր· քաղաքներու

Ն․ Ք․ ԴՔ․ 1701

ժ Եզր․ է․ 24։ ի Գլ․ խա․ 45։ — 22 խադրեց ։ ժ Միայն ի քուրմերուն
երկիրը ծախու չառաւ . ինչու
որ քուրմերը Փարաւոնէն [illegible]
բաժին ունէին , ու կ'ու–
տէին 'իրենց բաժինը , որ Փարա–
ւոն կու տար անոնց . անոր հա–
23 մար իրենց երկիրը չծախեցին ։ Եւ
Յովսէփ ըսաւ ժողովուրդին . Ահա
այսօր ծախու առի ձեզ՝ ու ձեր եր–
կիրը Փարաւոնին համար . ահա՝
ձեզի սերմ կու տամ , ու սերմանեցէք
24 երկիրը . Եւ [illegible] արդիւնքին հին–
գէն մէկը Փարաւոնին պիտի տաք ,
ու չորս մասը ձերը պիտի ըլլայ , որ
արտին սերմ՝ ու ձեզի և ձեր տանը
մէջ եղողներուն՝ ու ձեր տղաքնե–
25 րուն ուտելիք ըլլայ ։ Եւ ըսին .
ւ Գլ․ լգ․ 15։ — Մեզ ապրեցուցիր . ւ Թող մեր տի–
րոջը առջեւը շնորհք գտնենք , ու
26 Փարաւոնին ծառաներ ըլլանք ։ Եւ
Յովսէփ աս օրէնքը հաստատեց Ե–
գիպտոսի երկրին մէջ մինչև այսօր՝
որ հինգէն մէկը Փարաւոնին ըլլայ .
ս Հմր 22 ։ — ս բաց 'ի ւ քուրմերուն երկրէն՝ որ
ւ Հմր 22 ։ — Փարաւոնինը չեղաւ ։
փ Հմր 11 ։ — 27 Եւ Իսրայէլ փ կը բնակէր Եգիպ–
տոսի երկրին մէջ՝ Գեսեմի երկիրը .
ու հոն կալուածք ստացան , և
ք Գլ․ խզ․ 3։ — ք աճեցան ու խիստ շատցան ։
1689 — 28 Եւ Յակոբ Եգիպտոսի երկրին
մէջ տասնըեօթը տարի ապրեցաւ .
օ Տես Հմր 9։ — ու Յակոբին օ կենացը տարիներուն
օրերը հարիւր քառասունըեօթը
29 տարի եղաւ ։ Ու երբոր Իսրայէլին
ա Բ Օր․ լա․ 14։ Գ Թագ․ բ․ 1։ — մեռնելու օրերը ա մօտեցաւ , կանչեց
իր Յովսէփ որդին , ու ըսաւ անոր .
Թէ որ հիմա քու առջեւդ շնորհք
բ Գլ․ իդ․ 2։ — գտայ , կ'աղաչեմ քեզի՝ բ ձեռքդ
գ Գլ․ իդ․ 49։ — իմ երանքիս տակը դիր , և գ ինծի
մարդասիրութիւն ու ճշմարտու–
դ Տես Գլ․ ծ․ 25։ — թիւն ըրէ . կ'աղաչեմ քեզի՝ դ զիս
30 Եգիպտոսի մէջ մի՛ թաղեր . Հապա
ե Բ Թագ․ ժթ․ 37։ — ե իմ հայրերուս հետ ննջեմ , ու
դուն զիս Եգիպտոսէն հանես , և
զ Գլ․ խթ․ 29։ ծ․ 5, 13։ — զ իս անոնց գերեզմանը թաղես ։
Եւ անիկայ ըսաւ . Ես քու ըսածիդ
31 պէս պիտի ընեմ ։ Եւ ինքը ըսաւ .
է Գլ․ խր․ 2։ Գ Թագ․ ա․ 47։ Եբր․ ժա․ 21։ — ինծի երդում ըրէ . և անիկայ եր–
դում ըրաւ անոր ։ Եւ է Իսրայէլ
* Կամ՝ գաւազանին — *անկողինին գլխուն վրայ երկրպա–
գութիւն ըրաւ ։

## ԳԼ․ ԽԸ

1 Յովսէփ իր որդիներովը՝ հօրը հիւանդու–
թեանը տեսութեան կ'երթայ ։ 3 Յակոբ իրեն եղած
խոստումները կը պատմէ . 5 Եփրեմը ու Մա–
նասէն իր որդւոցը կարգը կը դնէ . 7 Յովսէփին
մօրը գերեզմանին ո՛ւր ըլլալը կ'ըսէ . 9 կ'օրհնէ
Եփրեմը ու Մանասէն . 17 պզտիկը մեծէն վեր
կը դնէ . 21 անոնց նորէն Քանան դառնալուն
համար կը մարգարէանայ ։

1689 — 1 Եւ եղաւ որ աս բաներէն ետքը
Յովսէփին ըսուեցաւ . Ահա
քու հայրդ հիւանդ է . և անիկայ
իր երկու որդիքը Մանասէն ու
2 Եփրեմը իր հետը առաւ ։ Եւ Յա– — Ն․ Ք․ ԴՔ․ 1689
կոբին պատմուեցաւ ու ըսուեցաւ .
Ահա քու որդիդ Յովսէփը քեզի
կու գայ . և Իսրայէլ ուժովցաւ՝
3 ու անկողինին վրայ նստաւ ։ Եւ
Յակոբ ըսաւ Յովսէփին . Ամենա–
կարող Աստուածը Քանանու եր– — ա Գլ․ իը․ 13, 19։ լե․ 6, 9, Եւ։
կիրը՝ ա Լուզին մէջ երեւցաւ ինծի ,
4 ու օրհնեց զիս . Եւ ըսաւ ինծի . Ա–
հա քեզ պիտի աճեցնեմ , ու շատ–
ցնեմ , և քեզ շատ ժողովուրդնե–
րու [illegible] պիտի ընեմ . և աս երկիրը
քեզմէ ետքը քու սերունդիդ բ յա– — բ Գլ․ ժէ․ 8։
ւիտենական կալուածք ըլլալու պի–
5 տի տամ ։ Եւ հիմա քու գ երկու — գ Գլ․ խա․ 50։ խզ․ 20։ Յես․ ժգ․ 7։ ժդ․ 4։
որդիքդ՝ որ ծնան քեզի Եգիպտո–
սի երկրին մէջ՝ քեզի Եգիպտոս
գալէս առաջ , իմս են . Եփրեմը ու
Մանասէն՝ Ռուբէնին ու Շմաւո–
6 նին պէս իմս պիտի ըլլան ։ Եւ ա–
նոնցմէ ետքը քու ծնած որդիքդ՝
քուկդ ըլլան . [illegible] իրենց ժառան–
գութեանը մէջ իրենց եղբայրնե–
7 րուն անուններովը կանչուին ։ Եւ
ես երբոր Միջագետքէն կու գայի ,
Քանանու երկրին մէջ ան ճամբուն
վրայ՝ որ տակաւին Եփրաթա եր–
թալու քիչ մը տեղ կայ , դ Ռաքէլը — դ Գլ․ լե․ 9, 16, 19։
մեռաւ իմ քովս . ու զանիկայ հոն
Եփրաթային՝ այսինքն Բեթլէհէ–
մին ճամբուն մէջ թաղեցի ։
8 Եւ Իսրայէլ տեսաւ Յովսէփին
որդիները՝ ու ըսաւ . Ո՞վ են ա–
9 սոնք ։ Եւ Յովսէփ ըսաւ իր հօրը .
ե Իմ որդիներս են՝ որ Աստուած — ե Գլ․ լգ․ 5։
հոս ինծի տուաւ . և անիկայ ը–
սաւ . Շնորհք ըրէ՝ ինծի բեր զա–
10 նոնք , զ որ օրհնեմ ։ Ու է Իսրայէ– — զ Գլ․ իէ․ 4։
լին աչքերը ծերութենէն ծանրա– — է Գլ․ իէ․ 1։
ցած էին , [illegible] որ չէր կրնար
տեսնել . և զանոնք մօտեցուց ա–
նոր , ու ը անիկայ համբուրեց զա– — ը Գլ․ իէ․ 27։
11 նոնք , և գրկեց ։ Ու Իսրայէլ ը–
սաւ Յովսէփին . թ Ես չէի յուսար — թ Գլ․ խե․ 26։
որ քու երեսդ տեսնեմ , և ահա
Աստուած ինծի քու սերունդդ ալ
12 ցուցուց ։ Եւ Յովսէփ հանեց զա–
նոնք անոր ծունկերէն , և իր երեսը
մինչև գետինը խոնարհութիւն ը–
13 րաւ ։ Եւ Յովսէփ առաւ անոնց
երկուքն ալ՝ Եփրեմը իր աջ ձեռ–
քովը Իսրայէլին ձախ կողմը , և
Մանասէն իր ձախ ձեռքովը Իսրա–
յէլին աջ կողմը , ու մօտեցուց
14 անոր ։ Եւ Իսրայէլ իր աջ ձեռ–
քը երկընցուց , ու Եփրեմին գլխուն
վրայ դրաւ , որ պզտիկն էր , ու իր
ձախ ձեռքը Մանասէին գլխուն վը–
րայ . անիկայ ժ խորհրդով իր ձեռ– — ժ Հմր 19 ։
քերը փոխեց . ինչու որ Մանասէն
15 անդրանիկն էր ։ Եւ ի օրհնեց զՅով– — ի Եբր․ ժա․ 21։
սէփ ու ըսաւ . Ան Աստուածը՝ Նո– — լ Գլ․ ժէ․ 1։ իդ․ 40։
րուն առջեւը իմ հայրերս Աբրահա–

Ն. Ք. ԳԺ.
1689

մը ու Իսահակը քալեցին, ան Աս-
տուածը՝ որ ծնած ատենէս՝ մինչև
16 այսօր իս կերակրեց, Ան Հրեշտա-
կը՝ որ իս ամէն չարիքներէն ազա-
տեց, օրհնէ ասոնք տղաքները, և իմ
անունս՝ ու իմ հայրերուս Աբրա-
համին և Իսահակին անունը ասոնց
վրայ կանչուի, ու երկրին մէջտեղը
17 խիստ շատնան։ Եւ Յովսէփ երբ
տեսաւ որ հայրը իր աջ ձեռքը
Եփրեմին գլխուն վրայ դրաւ, իրեն
հաճելի չեղաւ. և իր հօրը ձեռքը
բռնեց՝ որ զանիկայ Եփրեմին գլ-
խուն վրայէն Մանասէին գլխուն
18 վրայ փոխադրէ։ Եւ Յովսէփ ը-
սաւ իր հօրը. Ոչ այդպէս՝ հայր
իմ. ինչու որ անդրանիկը աս է.
քու աջ ձեռքդ անոր գլխուն վրայ
19 դիր։ Եւ իր հայրը չուզեց՝ ու
ըսաւ. Գիտեմ որդեակ իմ, գի-
տեմ. ասիկայ ալ ժողովուրդ պի-
տի ըլլայ, և ասիկայ ալ մեծ պիտի
ըլլայ. բայց անոր պզտիկ եղբայ-
րը անկէ աւելի մեծ պիտի ըլլայ,
ու անոր սերունդը խիստ մեծ ազգ
20 պիտի ըլլայ։ Եւ ան օրը օրհնեց
զանոնք ու ըսաւ. Իսրայէլը՝ ձեզ-
մով օրհնէ. Աստուած քեզ Եփ-
րեմին պէս և Մանասէին պէս ընէ՝
ըսելով. ու Եփրեմը Մանասէէն
առաջ դրաւ։
21 Եւ Իսրայէլ ըսաւ Յովսէփին.
Ահա ես կը մեռնիմ. և Աստուած
ձեզի հետ պիտի ըլլայ, ու ձեզ ձեր
հայրերուն երկիրը պիտի դարձնէ։
22 Եւ ես քու եղբայրներէդ մէկ բա-
ժին աւելի տուի քեզի, որ ան
Ամօրհացիներուն ձեռքէն իմ սը-
րովս ու աղեղովս առի։

ԳԼ. ԽԹ

1 Յակոբ իր որդիները կը կանչէ զանոնք օրհնելու համար։ 3 Անոնց մէկուն օրհնութիւնը։ 29 Իր թաղուելուն վրայով անոնց պատուէր կու տայ։ 33 Իր մահը։

1 Եւ Յակոբ կանչեց իր որդիները ու ըսաւ. Ժողվուեցէք, որ վերջին օրերը ձեր գլխուն գալիքը պատմեմ ձեզի։

2 Ժողվուեցէք ու ականջ տուէք ով Յակոբին որդիները, ու ձեր հօրը Իսրայէլին մտիկ ըրէք։

3 Ով Ռուբէն, դուն իմ անդրանիկս՝ իմ ոյժս ու իմ զօրութեանս սկիզբը, յարգութեան կատարելութիւնը ու զօրութեան կատարելութիւնը դուն ես։

4 Ջուրի պէս եռացիր, նախանձին պիտի չըլլաս. ինչու որ քու հօրդ անկողինը ելար. ան ատենը պղծեցիր զանիկայ։ (Իմ անկողինս ելաւ։)

5 Շմաւոնը ու Ղևին եղբայրներ են. զէնքերնին անիրաւութեան գործիքներ են։

6 Իմ հոգիս անոնց խորհուրդներուն չմտնէ, և իմ պատիւս անոնց ժողովքին հետ չմիանայ. ինչու որ իրենց բարկութեամբը մարդ սպաննեցին, և իրենց կամապաշտութեամբը ցուլի ջիղ կտրեցին։

7 Անիծեալ ըլլայ անոնց բարկութիւնը. ինչու որ խիստ էր, ու անոնց սրտմտութիւնը, ինչու որ սաստիկ էր. զանոնք Յակոբին մէջ պիտի բաժնեմ, ու զանոնք Իսրայէլին մէջ պիտի ցրուեմ։

8 Ով Յուդա՝ քու եղբայրներդ քեզ պիտի գովեն. քու ձեռքդ քու թշնամիներուդ պարանոցին վրայ ըլլայ. քու հօրդ որդիքը քեզի երկրպագութիւն ընեն։

9 Յուդան առիւծի ձագ է. որդեակ իմ՝ կողոպուտէն ելար. Առիւծի պէս ծունկ չոքեց, մատակ առիւծի պէս պառկեցաւ. զանիկայ ով պիտի արթընցընէ։

10 Իշխողութիւնը Յուդայէն պիտի չպակսի ու ալ անոր ոտքերուն մէջտեղէն օրէնսդիրը, մինչև որ Շիլովը գայ. ու ժողովուրդները անոր պիտի հնազանդին։

11 Իր յաւանակը որթին պիտի կապէ ու իր էշ իշուն ձագը ամէնէն աղէկ որթին. իր պատմուճանը գինիով պիտի լուայ, ու իր հանդերձը խաղողի արիւնով։

12 Իր աչքերը գինիէն կարմիր ու իր ակռաները կաթէն ճերմակ պիտի ըլլայ։

13 Զաբուղոնը ծովին եզերքը պիտի բնակի, ու անիկայ նաւերուն հանգիստը պիտի ըլլայ, և անոր սահմանը դէպ ի Սիդոն։

14 Իսաքարը ուժեղ էշ մըն է, որ գոմերուն մէջտեղը կը պառկի։

15 Եւ տեսնելով որ հանգստութիւնը աղէկ էր, ու երկիրը որ գեղեցիկ էր, իր ուսը բեռցընելու խոնարհեցուց, ու հարկատու ծառայ եղաւ։

16 Դանը իր ժողովուրդը պիտի դատէ, Իսրայէլի ցեղերէն մէկուն պէս։

17 Դանը ճամբու վրայ օձ մը պիտի ըլլայ, ու ճամբու վրայ իժ մը, որ ձիուն գարշապարը կը խածնէ, անանկ որ հեծեալը ետևը կիյնայ։

18 Ով Տէր՝ քու փրկութեանդ սպասեցի։

19 Գադին՝ գունդ մը վրան պիտի յարձակի, բայց վերջապէս ինքը պիտի յարձակի։

Ն. Ք. ԳԺ.
1689

166 · 174 · Եզ. ԽԵ 9 · ... 20 · ...

Ն. Ք. Ք. 1689

20 ր Ասերին հացը պարարտ պիտի ըլլայ. ու ինքը թագաւորի համադամ կերակուրներ պիտի տայ ։
21 ջ Նեփթաղիմը գեղեցիկ խօսքեր տուող՝ ազատ թողուած եղջերումն է ։
22 Յովսէփը պտղատու ոստ մըն է, աղբիւրի քով տնկուած պտղաբեր ոստ մը՝ որուն բողբոջները պատի վրայ կ'ելլեն ։
23 Աղեղնաւորները ս վշտացուցին զանիկայ, ու նետաձիգ եղան անոր, ու ատեցին զանիկայ ։
24 Բայց անոր ւ աղեղը զօրաւոր մնաց, և իր ձեռացը բազուկները ուժովցան, Յակոբին փ Հզօր Աստուծոյն ձեռքերովը ։ օ Իսրայէլին ֆ վէմը հոն ս Հովիւը անկէ է ։
25 ա Անոր քու հօրդ Աստուծմէն է՝ որ քեզի պիտի օգնէ, բ և Ամենակարողէն՝ գ որ քեզ պիտի օրհնէ, վերէն՝ երկինքին օրհնութիւններովը, ու վարը պառկող խորութեան օրհնութիւններովը, ծիծերուն ու արգանդին օրհնութիւններովը ։
26 Քու հօրդ օրհնութիւնները՝ * իմ նախնեացս օրհնութիւններէն՝ դ մինչև յաւիտենական բլուրներուն գագաթը" զօրացան. ե Յովսէփին գլխուն վրայ պիտի ըլլան, և անոր գագաթին վրայ՝ որ իր եղբայրներէն զատուած է ։
27 Բենիամինը զ յափշտակող գայլ պիտի ըլլայ. առաւուանց որսը պիտի ուտէ, է և գիշերը կողոպուտը պիտի բաժնէ ։
28 Ամէն ասոնք Իսրայէլի տասուերկու ցեղերն են. և աս է՝ որ անոնց հայրը խօսեցաւ անոնց, ու օրհնեց զանոնք. ամէն մէկուն օրհնութեանը
29 պէս օրհնեց զանոնք ։ Եւ պատուիրեց անոնց, ու ըսաւ. Ես ը իմ ժողովուրդիս պիտի խառնուիմ. թ իմ հայրերուս հետ զիս այրին մէջ թաղեցէք, որ Քետացի Եփրոնին
30 արտին մէջն է. Այն այրին մէջ՝ որ Քանանու երկիրը՝ Մամբրէին դիմացը եղող Մաքփելայի արտին մէջն է, ժ որն որ Աբրահամ արտին հետ մէկտեղ գերեզմանի կալուածքի համար՝ Քետացի Եփրոնէն ծախու ա-
31 ռաւ ։ ի Աբրահամը՝ ու անոր կնիկը Սառրան հոն թաղեցին. լ Իսահակը՝ ու անոր կնիկը Ռեբեկան հոն թաղեցին. ես ալ Լիան հոն թաղեցի ։
32 Այն արտը ու հոն եղած այրը Քետին որդիներէն ծախու առնուեցաւ ։
33 Եւ Յակոբ երբ լմնցուց իր որդուոցը պատուէր տալը, իր ոտքերը անկողնին մէջ ժողվեց, ու հոգին աւանդեց, և խ իր ժողովուրդին խառնուեցաւ ։

ր Բ Օր. լգ. 24. Յես. ժԹ. 24.
ջ Բ Օր. լգ. 23.
ս Գլ. լէ. 4. 24. 28. լԹ. 20. խբ. 21. Սաղ. ճժը. 13.
ւ Յոբ. իԹ. 20. Սաղ. լէ. 15.
փ Սաղ. ճլբ. 2. 5.
օ Գլ. խե. 11. խէ. 12. ծ. 21.
ֆ Ես. իը. 16.
ս Սաղ. ձ. 1.
ա Գլ. իը. 13. 21. լե. 3. խգ. 23.
բ Գլ. ժէ. 1. լե. 11.
գ Բ Օր. լգ. 13.
* Կամ՝ մշտընջենաւոր լեռներուն օրհնութիւններէն, յաւիտենական բլուրներուն վայելչութենէն.
դ Բ Օր. լգ. 15. Ամբ. գ. 6.
ե Բ Օր. լգ. 16.
զ Դատ. ի. 21. 25. Եզեկ. իբ. 25. 27.
է Թուոց. իգ. 24. Եսթ. ը. 11. Եզեկ. լԹ. 10. Զաք. ժգ. 1. 7.
ը Գլ. ժե. 15. իե. 8.
թ Գլ. խե. 30. Բ Թագ. ժԹ. 37.
ժ Գլ. ծ. 13.
ի Գլ. իգ. 16.
լ Գլ. իգ. 19. իե. 9.
խ Գլ. լե. 29.
ծ Հմր 29.

ԳԼ. Ծ

1 Յակոբին մահուանը սուգը ։ 4 Յովսէփ իր հօրը թաղմանը երթալու համար՝ Փարաւոնէն հրաման կ'առնէ ։ 7 Անոր յուղարկաւորութեան հանդէսը ։ 15 Յովսէփին եղբայրները ներում կը խնդրեն, ու ան ալ կը մխիթարէ զանոնք ։ 22 Յովսէփին տարիքը ։ 23 Իր տղուցը երրորդ սերունդը կը տեսնէ ։ 24 Իր եղբայրներուն կը մարգարէանայ՝ թէ Քանանու երկիրը պիտի դառնան ։ 25 Իր ոսկորներուն համար զանոնք կ'երդմնցընէ ։ 26 Կը մեռնի ու արկղի մէջ կը դրուի ։

1 Եւ Յովսէփ ա իր հօրը երեսին վրայ
ինկաւ, ու բ լացաւ անոր վրայ,
2 և համբուրեց զանիկայ ։ Եւ Յովսէփ իր բժիշկ ծառաներուն հրամայեց որ գ իր հայրը զմռսեն. և
3 բժիշկները զմռսեցին Իսրայէլը ։ Եւ անոր քառասուն օրը լմնցաւ. ինչու որ զմռսուածներուն օրերը ասանկ կը լմննար. և Եգիպտացիք դ անոր համար եօթանասուն օր սուգ ըրին ։
4 Եւ երբ անոր սուգին օրերը անցան, Յովսէփ խօսեցաւ ե Փարաւոնի տանը՝ ըսելով. Թէ որ հիմա ձեր առջև շնորհք գտայ, կ'աղաչեմ ձեզի՝ Փարաւոնին ականջին խօսեցէք
5 ու ըսէք. զ Իմ հայրս ինծի երդում ընել տուաւ՝ ըսելով. Ահա ես կը մեռնիմ. իմ գերեզմանիս մէջը՝ է որ ես ինծի համար Քանանու երկրին մէջ փորեցի, հոն թաղես. և հիմա շնորհք ըրէ՝ իմ հայրս թա-
6 ղելու երթամ, ու նորէն գամ ։ Եւ Փարաւոն ըսաւ. Ելի՛ր, ու թաղէ քու հայրդ՝ ինչպէս որ անիկայ քեզի երդում ընել տուաւ ։
7 Եւ Յովսէփ իր հայրը թաղելու ելաւ. և Փարաւոնին բոլոր ծառաները՝ անոր տանը ծերերը՝ ու Եգիպտոսի երկրին բոլոր ծերերը ա-
8 նոր հետ ելան. Նաև Յովսէփին բոլոր տունը՝ ու անոր եղբայրները՝ և անոր հօրը տունը. միայն իրենց տղաքները, ու իրենց հօտերը, և իրենց արջառները Գեսեմի երկրին
9 մէջ թողուցին ։ Եւ անոր հետ կառքեր ու ձիաւորներ ելան, ու
10 շատ մեծ բանակ մը եղաւ ։ Եւ եկան Ատադին կալը՝ որ Յորդանանու մէկալ կողմն է. հոն ը մեծ ու խիստ սաստիկ լացով մը ողբացին, թ և իր հօրը համար եօթը օր սուգ
11 ըրաւ ։ Եւ ան երկրին մէջ բնակող Քանանացիները երբոր տեսան Ատադին կալին մէջի սուգին հանդէսը, ըսին. Աս մեծ սուգ մը ըլլալու է Եգիպտացիներուն. անոր համար անոր անունը † Աբէլմիսրաիմ դրին, որ Յորդանանու մէկալ կողմն է ։
12 Եւ անոր որդիքը ըրին անոր՝ ինչ-
13 պէս որ պատուիրեր էր ։ Եւ ժ անոր որդիքը Քանանու երկիրը տարին զանիկայ, ու թաղեցին զանիկայ Մամբրէին դիմացը եղող Մաքփե-

Ն. Ք. Ք. 1689

ա Գլ. խզ. 4.
բ Բ Թագ. ժգ. 14.
գ Հմր 26. Բ Մն. ժզ. 14. Մատ. իզ. 12. Մար. ժդ. 8. ժզ. 1. Ղուկ. իդ. 1. Յով. ժբ. 7. ժԹ. 39. 40.
դ Թուոց. ի. 30. Բ Օր. լդ. 8.
ե Եսթ. դ. 2.
զ Գլ. խէ. 29.
է Բ Մն. ժզ. 14. Ես. իբ. 16. Մատ. իե. 60.
ը Բ Թագ. ա. 17. Գործ. ը. 2.
թ Ա Թագ. լա. 13. Յոբ. բ. 13.
† Այս՝ սուգ Եգիպտացւոց.
ժ Գլ. խթ. 29. 30. Գործ. է. 16.

Ն. Ք. ԳՔ.
1689

 էԳլ. իգ. 16։

ւՅոբ. ժե. 21, 22.։

խԱռակ. իը. 13։
ծԳլ. խթ. 25։
կԳլ. լէ. 7, 10։
հԳլ. խե. 5։
ձբՕր. լբ. 35։ Յոբ. լդ. 29։ Հռով. ժբ. 19։ Եբր. ժ. 30։ գԹագ. ե. 7։
ղՍաղ. ծզ. 5։ Եւ. ժ. 7։
ճԳլ. խե. 5, 7։ Գոր. գ. 13, 14, 15։

լայի արտին այրին մէջը, որն որ
Աբրահամ էգերեզմանի կալուածքի
համար ծախու առաւ արտին հետ
14 մէկտեղ Քետացի Եփրոնէն։ Եւ
Յովսէփ իր հայրը թաղելէն ետև՝
Եգիպտոս դարձաւ, ինքը՝ ու իր
եղբայրները՝ և ան ամէնը՝ որ իրեն
հետ իր հայրը թաղելու ելան։
15 Եւ Յովսէփին եղբայրները տեսնե-
լով որ իրենց հայրը մեռաւ, Ըրսին
ւԹերեւս. Գուցէ Յովսէփ ոխ պահե-
լով՝ պիտի հատուցանէ մեզի ան ա-
16 մէն չարիքը՝ որն որ ըրինք իրեն։ Եւ
Յովսէփին պատգամաւոր խրկեցին՝
ըսելով. Քու հայրդ մեռնելէն ա-
ռաջ պատուիրեց ըսելով՝ ու ըսաւ.
17 Յովսէփին ասանկ ըսէք. Հիմա շը-
նորհք ըրէ՝ քու եղբայրներուդ յան-
ցանքը ու անոնց մեղքը ներէ, ԽԻն-
չու որ քեզի չարութիւն ըրին. և
հիմա կ՚աղաչենք քեզի՝ ծքու հօրդ
Աստուծոյն ծառաներուն յանցանքը
ներէ։ Եւ Յովսէփ լացաւ՝ երբոր ա-
18 նոնք խօսեցան իրեն։ Ու անոր եղ-
բայրներն ալ գացին, և կանոր առ-
ջևը ինկան, ու ըսին. Ահա մենք քու
19 ծառաներդ ենք։ Եւ Յովսէփ ըսաւ
անոնց. հՄի՛ վախնաք. ձմիթէ ես
20 Աստուծոյ տե՞ղն եմ։ ղԵւ թէ-
պէտ դուք ինծի դէմ չարութիւն
խորհեցաք, ճբայց Աստուած ան
աղէկի դարձնել խորհեցաւ. ա-
նանկ որ՝ աս օրուան եղածին պէս՝
21 շատ ժողովուրդ ապրեցընէ։ Եւ
հիմա մի՛ վախնաք. յես ձեզ՝ ու
ձեր ընտանիքները պիտի կերակ-
րեմ։ Այսպէս մխիթարեց զանոնք
յ*քաղցրութեամբ խօսելով։
22 Եւ Յովսէփ Եգիպտոս բնակե-
ցաւ, ինքը՝ և իր հօրը տունը. և
Յովսէփ հարիւր տասը տարի ապ-
23 րեցաւ։ Եւ Յովսէփ՝ Եփրեմին
որդիները՝ նմինչև երրորդ սերունդը
տեսաւ, և Մանասէին որդւոյն
ւՄաքիրին որդիներն ալ ոՅովսէ-
փին ծունկերուն վրայ ծնան։
24 Եւ Յովսէփ իր եղբայրներուն
ըսաւ. Ահա ես կը մեռնիմ. ու
ւԱստուած անշուշտ ձեզի այցելու-
թիւն պիտի ընէ, ու ձեզ աս երկ-
րէն պիտի հանէ դէպ 'ի ան երկիրը՝
պորուն համար ինքը երդում ըրաւ
Աբրահամին՝ Իսահակին ու Յակո-
25 բին։ Եւ ՋՅովսէփ Իսրայէլի որ-
դւոցը երդում ընել տուաւ՝ ըսե-
լով. Աստուած անշուշտ ձեզի այ-
ցելութիւն պիտի ընէ. ու իմ ոս-
26 կորներս ասկից հանէք։ Եւ Յով-
սէփ հարիւր տասը տարեկան ըլլա-
լով մեռաւ. ու ռզմռսեցին զանի-
կայ, և տապանի մը մէջ դրին
Եգիպտոսի մէջ։

Ն. Ք. ԳՔ.
1689

յԳլ. խէ. 12։ Մատ. ե. 44։

յԳլ. լդ. 3։
*Եբր. անոնց սրտին

1635

նՅոբ. խբ. 16։
ւԹուռ. լբ. 39։
ոԳլ. լ. 3։

ւԳլ. ժե. 14։ խզ. 4։ խը. 21։ Ել. գ. 16, 17։ Եբր. ժա. 22։
պԳլ. ժե. 14։ իզ. 3։ լե. 12։ խզ. 4։
ՋԵլ. ժգ. 19։ Յեսու. իդ. 32։ Գործ. է. 16։

ռՀմր 2։

# ԳԻՐՔ ԵԼԻՑ

Ն. Ք. ԳՔ.
1706

## ԳԼՈՒԽ Ա

1 Յովսեփին մեռնելէն ետքը՝ Իսրայէլի որդիքը կը՛ շատնան։ 8 Նոր թագաւորը թէև կը չարչարէ զանոնք ծանր գործքերով՝ բայց անոնք աւելի կը շատնան։ 15 Մանկաբարձները Աստուծմէ վախնալով՝ արու զաւակները կ՚ապրեցընեն։ 22 Փարաւոն կը հրամայէ արու զաւակները գետը նետել։

ոԾն. խզ. 8։ Գլ. զ. 14։

բԾն. խզ. 26, 27։ Հմր 20։ բՕր. ժ. 22։
գԾն. ծ. 26։ Գոր. է. 15։

1635

դԾն. խզ. 8։ բՕր. իզ. 5։ Սաղ. ճե. 24։ Գոր. է. 17։

1 Եւ ոԵգիպտոս գացող Իսրայէլի
որդւոցը անունները ասոնք են.
ամէն մէկը իր տունովը Յակոբին
2 հետ գնաց. Ռուբէն, Շմաւոն,
3 Ղևի ու Յուդա, Իսաքար, Զա-
4 բուղոն և Բենիամին, Դան ու
Նեփթաղիմ, Գադ ու Ասեր։
5 Եւ Յակոբին երանքէն ելած բոլոր
հոգիները բեօթանասուն հոգի էին.
6 Յովսէփն ալ Եգիպտոս էր։ Եւ
գՅովսէփ ու անոր բոլոր եղբայրները
7 և բոլոր ան ազգը մեռան։ դԵւ
Իսրայէլի որդիքը աճեցան ու բազ-
մացան և շատցան ու խիստ զօրա-
ցան. և ան երկիրը անոնցմով լե-
ցուեցաւ։
8 Արդ՝ եԵգիպտոսի վրայ մէկ նոր
թագաւոր մը ելաւ, որ Յովսէփը
9 չէր ճանչնար։ Եւ անիկայ ըսաւ
իր ժողովուրդին. Ահա զԻսրայէլի
որդւոցը ժողովուրդը մեզմէ շատ ու
10 զօրաւոր են. էԵկէք իմաստու-
թիւն բանեցընենք անոնց դէմ, որ
չըլլայ թէ շատնան, ու երբոր պա-
տերազմ պատահելու ըլլայ. անոնք
ալ մեր թշնամիներուն հետ մէկ
ըլլան. ու մեզի դէմ պատերազմին
11 և աս երկրէս ելլեն։ Անոր համար
գործավարներ դրին անոնց վրայ.
ըոր չարչարեն զանոնք թիրենց ծանր
գործքերովը. և Փարաւոնին շտե-
մարանի քաղաքներ Փիթօմը իու
12 Ռամսէսը շինեցին։ Եւ որչափ կը
չարչարէին զանոնք. այնչափ ալ
աւելի կը շատնային ու կ՚աճէին
և անոնք Իսրայէլի որդւոցմէն

Ն. Ք. ԳՔ.
1635

եԳոր. է. 18։

զՍաղ. ճե. 24։
էՍաղ. ժ. 2։ ձգ. 3. 4։
ըՅոբ. ե. 13։ Սաղ. ճե. 25։ Առակ. ժզ. 25։ իա. 30։ Գոր. է. 19։

ըԾն. ժե. 13։ Գլ. գ. 7։ բՕր. իզ. 6։
թԳլ. բ. 11։ ե. 4. 5։ Սաղ. ձա. 6։
էԾն. խէ. 11։

Ն․ Ք․ Ք․ 1635

[ա] Գլ․ բ 23 ։ գ․ 9 ։ Թուոց․ ի․ 15 ։ Գործ․ է․ 19, 34 ։
[բ] Սաղ․ ճա․ 6 ։
Իբր 1635
[գ] Առակ․ ժզ․ 6 ։
[դ] Դան․ գ․ 16, 18 ։ զ․ 13 ։ Գործ․ ե․ 29 ։
[ե] Տես Յես․ բ․ 4, 5 ։ բ Թագ․ ժէ․ 19, 20 ։
[զ] Առակ․ ժա․ 18 ։ Ժող․ ը․ 12 ։ Ես․ գ․ 10 ։ Եբր․ զ․ 10 ։
[է] Տես ա Թագ․ բ․ 35 ։ բ Թագ․ է․ 11, 13, 27, 29 ։ գ Թագ․ բ․ 24 ։ ժա․ 38 ։ Սաղ․ ճիէ․ 1 ։
Իբր 1573
[ը] Գործ․ է․ 19 ։
[ա] Գլ․ զ․ 20 ։ Թուոց․ իզ․ 59 ։ ա Մն․ իզ․ 14 ։
1571
[բ] Գործ․ է․ 20 ։ Եբր․ ժա․ 23 ։
[գ] Գլ․ ժե․ 20 ։ Թուոց․ իզ․ 59 ։
[դ] Գործ․ է․ 21 ։

13 ճանճրացան ։ Եւ Եգիպտացիք
բռնութեամբ կը ծառայեցընէին
14 Իսրայէլի որդիները ․ Եւ [ա]անոնց
կեանքը ծանր գործով՝ [բ]կաւով՝ ու
աղիւսներով՝ և դաշտին ամէն գոր-
ծովը կը դառնացընէին ․ ինչ ծա-
ռայութիւն որ անոնց ընել տային՝
բռնութեամբ էր ։
15 Եւ Եգիպտոսի թագաւորը խօ-
սեցաւ Եբրայեցւոց մանկաբարձնե-
րուն ․ որոնց մէկուն անունը Սեփ-
րա՝ ու մէկալին անունը Փուա էր ,
16 Ու ըսաւ ․ Եբրայեցի կնիկնե-
րուն տղաքը առած ատեննիդ՝
նստարաններուն վրայ նայիք , թէ
որ տղայ է՝ մեռցընէք անիկայ , և թէ
17 որ աղջիկ է՝ թող ողջ մնայ ։ Բայց
մանկաբարձները Աստուծմէ [գ]վախ-
ցան , ու [դ]Եգիպտոսի թագաւորին
իրենց ըսածին պէս չըրին ․ հապա
18 արուները ողջ կը թողուին ։ Եւ
Եգիպտոսի թագաւորը կանչեց
մանկաբարձները , ու ըսաւ անոնց ․
Ինչո՞ւ աս բանը ըրիք , ու արու-
19 ները ողջ թողուցիք ։ Եւ [ե]մանկա-
բարձները ըսին Փարաւոնին ․ Քան-
զի Եբրայեցի կնիկները Եգիպտացի
կնիկներուն պէս չեն ․ ինչու որ
առոյգ են ․ մանկաբարձը անոնց
20 չգացած՝ կը ծնանին ․ [զ]Անոր հա-
մար Աստուած մանկաբարձներուն
բարիք ըրաւ ․ և ժողովուրդը շատ-
21 ցաւ , ու խիստ զօրացաւ ։ Եւ
եղաւ որ մանկաբարձները Աստուծ-
մէ վախնալնուն համար , [է]անոնց
22 տուներ շինեց ։ Եւ Փարաւոն իր
բոլոր ժողովուրդին հրամայեց՝ ըսե-
լով , [ը]Ամէն ծնած տղան գետը
նետեցէք , և ամէն աղջիկը ողջ
թողուցէք ։

## ԳԼ․ Բ

1 Մովսէս կը ծնանի ․ 3 և տապանակով մը շամ-
բերուն մէջ կը ձգուի ։ 5 Փարաւոնին աղջիկը
կը գտնէ զանիկայ , ու իրեն որդեգիր կ'ընէ ։
11 Մովսէս՝ Եգիպտացի մը կը սպաննէ ․ 13
Եբրայեցի մը կը յանդիմանէ ․ 15 և Մադիամ
փախչելով , 21 հոն Սեպփորան իրեն կնիկ
կ'առնէ ։ 22 Գերսամին ծնունդը ։ 23 Իս-
րայելացւոց աղաղակը Աստուծոյ կը հասնի ։

1 Եւ [ա]Ղևիին տունէն մէկը գնաց ,
ու Ղևիին մէկ աղջիկը կին ա-
2 ռաւ ։ Եւ կնիկը յղացաւ , ու որ-
դի մը ծնաւ ․ և [բ]անոր գեղեցիկ
ըլլալը տեսնելով՝ իրեք ամիս պա-
3 հեց զանիկայ ։ Եւ երբ ալ չէր կըր-
նար պահել անիկայ , պրտուեղէն
տապանակ մը առաւ անոր համար ,
և կպրով ու ձիւթով ծեփեց ան ,
և տղան մէջը դրաւ , ու գետին ե-
զերքը եղած շամբին մէջ ձգեց ․
4 [գ]Եւ անոր քոյրը հեռուէն կայնեցաւ,
որ տեսնէ թէ ինչ պիտի պատահի
5 անոր ․ Եւ [դ]Փարաւոնին աղջիկը
գետը իջաւ լուացուելու և անոր
աղախինները գետին եզերքը կը
պտըտէին ․ և երբ անիկայ շամբին
մէջտեղը տապանակը տեսաւ , իր
աղախինը խրկեց , որ բերաւ անի-
6 կայ ․ Եւ երբոր բացաւ , տղան տե-
սաւ , և ահա տղան կու լար ․ և
խղճաց անոր վրայ , ու ըսաւ ․ Ասի-
կայ Եբրայեցւոց տղաքներէն է ։
7 Եւ անոր քոյրը ըսաւ Փարաւո-
նին աղջկանը ․ Երթա՞մ ու քեզի
Եբրայեցիներէն ծիծ տուող կնիկ
մը կանչե՞մ , որ տղան սնուցանէ
8 քեզի համար ։ Եւ Փարաւոնին
աղջիկը ըսաւ անոր ․ Գնա՛ ․ և աղ-
ջիկը գնաց , ու տղուն մայրը կան-
9 չեց ։ Եւ Փարաւոնին աղջիկը ը-
սաւ անոր ․ Ա՛ռ աս տղան՝ որ սը-
նուցանես ինծի համար , ու ես քու
վարձքդ կու տամ ․ և կնիկը առաւ
10 տղան ու սնուց անիկայ ։ Երբոր
տղան մեծցաւ , Փարաւոնին աղջը-
կանը բերաւ զանիկայ , ու [ե]անոր
որդին եղաւ ․ և անոր անունը
*Մովսէս դրաւ , ու ըսաւ ․ Քանզի
ջուրէն հանեցի զանիկայ ։
11 Եւ եղաւ որ ան օրերը [զ]երբոր
Մովսէս մեծցաւ ․ իր եղբայրներուն
ելաւ , ու անոնց [է]ծանր գործքերուն
նայեցաւ ․ և տեսաւ Եգիպտացի մը՝
որ իր եղբայրներէն Եբրայեցիին
12 մէկը կը ծեծէր ։ Եւ երբ անդին
ասդին նայելով՝ տեսաւ որ մէկը
չկայ , [ը]մեռցուց Եգիպտացին , ու
աւազին մէջը թաղեց զանիկայ ։
13 Եւ [թ]հետևեալ օրը ելաւ , և ահա
երկու Եբրայեցի մարդիկ կը կը-
ռուէին իրարու հետ ․ և ըսաւ անոր՝
որ իրաւունք չունէր ․ Ինչո՞ւ քու
14 ընկերիդ կը զարնես ։ Եւ անիկայ
ըսաւ ․ [ժ]Ո՞վ քեզ մեր վրայ իշխան
ու դատաւոր դրաւ ․ ի՞ս ալ մեռ-
ցընելու միտք ունիս , ինչպէս որ
Եգիպտացին մեռցուցիր ։ Եւ
Մովսէս վախցաւ՝ ու ըսաւ ․ Ան-
15 շուշտ աս բանը իմացուած է ։ Եւ
երբ Փարաւոն լսեց աս բանը ,
Մովսէսը մեռցընել կ'ուզէր ․ բայց
[ի]Մովսէս Փարաւոնին երեսէն փա-
խաւ , ու Մադիամու երկիրը բնա-
կեցաւ ․ և [լ]հորի մը քով նստաւ ։
16 [խ]Եւ Մադիամու քուրմը եօթը
աղջիկ ունէր ․ [ծ]ու անոնք եկան՝ և
ջուր քաշեցին , ու իրենց հօրը հօտը
խմցընելու համար աւազանները
17 լեցուցին ։ Եւ հովիւները եկան՝
ու վռնտեցին զանոնք ․ և Մովսէս
ելաւ՝ ու ազատեց անոնք , և [կ]անոնց
18 հօտին ջուր խմցուց ։ Եւ երբ ա-
նոնք իրենց հօրը [հ]Ռագուէլին ե-
կան , անիկայ ըսաւ ․ Այսօր ի՞նչ
19 պատճառով շուտ եկաք ։ Եւ ըսին ․
Մէկ Եգիպտացի մը մեզ հովիւնե-
րուն ձեռքէն ազատեց և մեզի ալ

Ն․ Ք․ Ք․ 1571

[ե] Գործ․ է․ 21 ։
* Եբ՝ ջուրէն հանուած ։
[զ] Գործ․ է․ 23, 24 ։ Եբր․ ժա․ 24, 25, 26 ։
[է] Գլ․ ա․ 11 ։
1531
[ը] Գործ․ է․ 24 ։
[թ] Գործ․ է․ 26 ։
[ժ] Գործ․ է․ 27, 28 ։
[ի] Գործ․ է․ 29 ։ Եբր․ ժա․ 27 ։
[լ] Ծն․ իդ․ 11 ։ իթ․ 2 ։
[խ] Գլ․ գ․ 1 ։
[ծ] Ծն․ իդ․ 11 ։ իթ․ 10 ։ ա Թագ․ թ․ 11 ։
[կ] Ծն․ իթ․ 10 ։
[հ] Թուոց․ ժ․ 29 ։ Գլ․ գ․ 1 ։ դ․ 18 ։ ժը․ 1, 5 ։

Ն. Ք. Դ. Ք.
1531

յ Ծն. լա. 54։ Խղ. 25։
ւ Գլ. դ. 25։ ժը. 2։
ց Գլ. ժը. 3։
* Ա՝ Նոն պանդխտա-ցած։
ւ Գոր. է. 29։ Եբր. ժա. 13, 14։
յ Գլ. է. 7։ Գոր. է. 30։
ն Թու. ի. 16։ բ Օր. իզ. 7։ Սաղ. ժբ. 5։
ւ Ծն. ժը. 20։ Գլ. գ. 9։ իր. 23, 27։ բ Օր. իդ. 15։ Յակ. ե. 4։
ա Գլ. զ. 5։
ւ Գլ. զ. 5։ Սաղ. ճե. 8, 42։ ճզ. 45։
գ Ծն. ժե. 14։ Խղ. 4։
լ Գլ. դ. 31։ ա Թագ. ա. 11։ բ Թագ. ժզ. 12։ Ղու. ա. 25։
ա Գլ. գ. 7։

1491
ա Գլ. բ. 16։
բ Գլ. ժը. 5։ գ Թագ. ժթ. 8։
գ բ Օր. լգ. 16։ Ես. կգ. 9։ Գոր. է. 30։
դ Սաղ. ճժա. 2։ Գոր. է. 31։
ե բ Օր. լգ. 16։
զ Գլ. ժթ. 12։ Յես. ե. 15։ Գոր. է. 33։
է Ծն. իը. 13։ Հմր 15։ Գլ. դ. 5։ Մատ. իբ. 32։ Մար. ժբ. 26։ Ղու. ի. 37։ Գոր. է. 32։
ը գ Թագ. ժթ. 13։ Ես. զ. 1, 5։ Նեեմ. թ. 9։ Սաղ. ճզ. 44։ Գոր. է. 34։
թ Գլ. ա. 11։
ժ Գլ. բ. 23, 24։

շատ ջուր քաշեց, ու հօտին խըմ-
20 ցուց։ Ան ալ ըսաւ իր աղջիկնե-
րուն. Եւ ո՞ւր է անիկայ. ինչո՞ւ
ան մարդը այդպէս թող տուիք.
կանչեցէ՛ք անիկայ՝ որ յհաց ուտէ։
21 Եւ Մովսէս հաճեցաւ ան մարդուն
հետ բնակիլ, ու անիկայ ւիր Սեպ-
փօրա աղջիկը Մովսէսին տուաւ։
22 Եւ ¶ն՛ա որդի մը ծնաւ, և անիկայ
անոր անունը ց*Գերսամ դրաւ.
քանզի ըսաւ. ւՊանդուխտ եղայ
օտար երկրի մէջ։
23 Եւ եղաւ որ յշատ օրերէն ետքը
Եգիպտոսի թագաւորը մեռաւ, և
Իսրայէլի որդիքը նծառայութեան
պատճառաւ հառաչեցին ու աղա-
ղակեցին. և ծառայութեան հա-
մար ւանոնց աղաղակը Աստուծոյ
24 ելաւ։ Եւ Աստուած աանոնց հե-
ծութիւնը լսեց. ու Աստուած
ւյիշեց գիր ուխտը՝ որ Աբրահա-
մին, Իսահակին ու Յակոբին հետ
25 ըրեր էր։ Եւ Աստուած լնայեցաւ
Իսրայէլի որդւոցը վրայ, ու Աս-
տուած ադիտցաւ անոնց վիճակը։

ԳԼ. Գ

1 Մովսէս իր Յոթոր աներին հօտը կ'արածէ։ 2 Այրուող մորենիին մէջ Աստուած կ'երևնայ Մովսէսին, 9 ու զանիկայ Եգիպտոս կը խրկէ Իսրայէլը փրկելու։ 14 Աստուծոյ անունը, 15 և իր պատգամը Իսրայէլացւոց խրկուած։

1 Եւ Մովսէս՝ աՄադիամու քուրմին
իր Յոթոր աներին հօտը կ'արա-
ծէր. ու հօտը անապատին ետին
քշելով՝ բԱստուծոյ լեռը Քորեբ
2 եկաւ։ Եւ գՏէրոջը հրեշտակը
կրակի բոցով մորենիին մէջէն երև-
ցաւ անոր. և անիկայ տեսաւ որ
աչա մորենին կրակով կը վառէր,
3 բայց մորենին չէր սպառէր։ Եւ
Մովսէս ըսաւ. Հիմա դառնամ ու
աս դմեծ տեսարանը տեսնեմ՝ թէ
4 ինչո՞ւ համար մորենին չայրիր։ Եւ
երբ Տէրը տեսաւ որ անիկայ տես-
նելու դարձաւ, Աստուած եմորե-
նիին մէջէն կանչեց անոր՝ ու ըսաւ.
Մովսէ՛ս՝ Մովսէս. և անիկայ ըսաւ.
5 Ահա հոս եմ։ Եւ Աստուած ըսաւ.
Հոս մի՛ մօտենար. զկօշիկներդ հա-
նէ՛ քու ոտքերէդ. ինչու որ ան
տեղը՝ որուն վրայ դուն կայներ ես,
6 սուրբ երկիր է։ Նաև ըսաւ անոր.
էԵս եմ քու հօրդ Աստուածը՝ Աբ-
րահամին Աստուածը՝ Իսահակին
Աստուածը ու Յակոբին Աստուա-
ծը. և Մովսէս իր երեսը պահեց.
ինչու որ ըԱստուծոյ նայելու վախ-
ցաւ։
7 Եւ Տէրը ըսաւ. Եգիպտոսի մէջ
եղող ժողովուրդիս չարչարանքը
յիրաւի տեսայ. և թգործավարնե-
րուն պատճառաւը ժանոնց վերցու-
ցած աղաղակը լսեցի. ինչու որ
ժանոնց նեղութիւնները գիտեմ.
8 Եւ զանոնք Եգիպտացւոց ձեռքէն
ազատելու, ու զանոնք ան երկրէն
ի մէկ աղէկ ու լայնարձակ երկիր
մը՝ ժկաթ ու մեղր բղխող երկիր
մը՝ լՔանանացւոց ու Քետացւոց և
Ամօրհացւոց ու Փերեզացւոց և
Խևացւոց ու Յեբուսացւոց տեղը
9 հանելու իջայ։ Եւ ահա հիմա
յԻսրայէլի որդւոցը աղաղակը ինծի
հասած է. ու ւԵգիպտացիներուն
անոնց ըրած հարստահարութիւնն
10 ալ տեսայ։ ցՈւստի եկո՛ւր հիմա՝
քեզ Փարաւոնին խրկեմ, և իմ
ժողովուրդս Իսրայէլի որդիքը Ե-
11 գիպտոսէն հանես։ Եւ Մովսէս
ըսաւ Աստուծոյ. ւԵս ո՞վ եմ՝ որ
Փարաւոնին երթամ, ու Իսրայէլի
12 որդիքը Եգիպտոսէն հանեմ։ Եւ
ըսաւ. յԱնշուշտ ես քեզի հետ պի-
տի ըլլամ. և աս ըլլայ քեզի նշան՝
որ ես քեզ խրկեր եմ. երբոր ժո-
ղովուրդը Եգիպտոսէն հանես, աս
լեռանը վրայ պիտի պաշտէք զԱս-
տուած։
13 Եւ Մովսէս ըսաւ Աստուծոյ. Ա-
հա ես կ'երթամ Իսրայէլի որդւո-
ցը՝ ու կ'ըսեմ անոնց. Ձեր հայրե-
րուն Աստուածը իս ձեզի խրկեց.
և երբոր ըսեն ինծի՝ թէ՝ Ի՞նչ է ա-
նոր անունը, ի՞նչ ըսեմ անոնց։
14 Եւ Աստուած ըսաւ Մովսէսին. Ես
եմ ՈՐ ԷՆ։ Եւ ըսաւ. Այսպէս
պիտի ըսես Իսրայէլի որդւոցը. նԻս
15 ՈՐ ԷՆ խրկեց ձեզի։ Եւ դար-
ձեալ Աստուած ըսաւ Մովսէսին.
Ասանկ պիտի ըսես Իսրայէլի որդւո-
ցը. Ձեր հայրերուն Եհովայ Աս-
տուածը՝ Աբրահամին Աստուածը՝
Իսահակին Աստուածը ու Յակոբին
Աստուածը իս ձեզի խրկեց. ւիմ ա-
նունս յաւիտեան աս է, և ազգէ
16 ազգ իմ յիշատակս աս է։ Գնա՛
աԻսրայէլի ծերերը մէկտեղ ժողվէ,
ու ըսէ անոնց. Ձեր հայրերուն Ե-
հովայ Աստուածը՝ Աբրահամին՝ Ի-
սահակին ու Յակոբին Աստուածը
երևցաւ ինծի՝ ըսելով. Արդարև
ւայցելութիւն ըրի ձեզի, ու Ե-
գիպտոսի մէջ ձեր քաշածը տեսայ.
17 Եւ ըսի որ գձեզ Եգիպտոսի չար-
չարանքէն՝ դէպ 'ի Քանանացւոց
ու Քետացւոց և Ամօրհացւոց ու
Փերեզացւոց և Խևացւոց ու Յե-
բուսացւոց երկիրը՝ կաթ ու մեղր
18 բղխող երկիրը հանեմ։ Եւ լա-
նոնք քու ձայնիդ մտիկ պիտի ը-
նեն. և ադուն՝ ու Իսրայէլի ծե-
րերը Եգիպտոսի թագաւորին պի-
տի մտնէք, ու ըսէք անոր. Եբ-
րայեցւոց Աստուածը Եհովան ամե-
զի հանդիպեցաւ. և հիմա կ'աղա-
չենք՝ իրեք օրուան ճամբայ եր-

Ն. Ք. Դ. Ք.
1491

է Ծն. ժը. 21։ Գլ. բ. 25։
ւ Գլ. զ. 6, 8։ ժբ. 15։
ի բ Օր. ա. 25։ ը. 7, 8, 9։
ժ Հմր 17։ Գլ. ժգ. 5։ Լգ. 3։ Թու. ժգ. 27։ բ Օր. իզ. 9, 15։ Երեմ. ժա. 5։ Լբ. 22։ Եզեկ. ի. 6։
լ Ծն. ժե. 18—21։
հ Ծն. ժա. 5, 7։ ժը. 21։ ծ. 24։
յ Գլ. բ. 23։
ւ Գլ. ա. 11, 13, 14, 22։
ց Սաղ. ճե. 26։ Միք. զ. 4։
ւ Տեսգլ. զ. 12։ ա Թագ. ժը. 18։ Ես. զ. 5, 8։ Երեմ. ա. 6։
յ Ծն. լա. 3։ բ Օր. լա. 23։ Յես. ա. 5։ Հռով. ը. 31։
ն Գլ. զ. 3։ Յով. ը. 58։ բ Օր. ա. 20։ Եբր. ժգ. 8։ Յայտ. ա. 4։
ւ Սաղ. ճլե. 13։ Ովս. ժբ. 5։
ա Գլ. դ. 29։
ւ Ծն. ծ. 24։ Գլ. բ. 25։ դ. 31։ Ղու. ա. 68։
գ Ծն. ժե. 14, 16։ Հմր 8։
լ Գլ. դ. 31։
ա Գլ. ե. 1, 3։
ա Թու. իգ. 3, 4, 15, 16։

Ն. Ք. ԴՔ.
1491

ԳԼ. Ե. 2. Է. 4.
Կամ՝ եթէ ոչ
ԳԼ. Գ. 6. Է. 5. Թ. 15.
ԳԼ. Է. 3. ԺԱ. 9. Բ Օր. Զ. 22. Նէեմ. Թ. 10. Սաղ. ՃԵ. 27. ՃԼԵ. 9. Երեմ. ԼԲ. 20. Գործ. Է. 36. Տես ԳԼ. Է—ԺԴ.
ԳԼ. ԺԲ. 31.
ԳԼ. ԺԱ. 3. ԺԲ. 36. Սաղ. ՃԶ. 43. Առակ. ԺԶ. 7.
Ծն. ԺԵ. 14. ԳԼ. ԺԱ. 2. ԺԲ. 35. 36.
Յոբ. ԻԷ. 17. Առակ. ԺԳ. 22. Եզեկ. ԼԹ. 10.

թանք դէպ ՚ի անապատը. որ մեր
Եհովայ Աստուծոյն զոհ մատուցա-
19 նենք ։ Եւ ես գիտեմ որ Եգիպ-
տոսի թագաւորը պիտի չթողու
ձեզ որ երթաք, ոչ ալ՝ զօրաւոր
20 ձեռքով ։ Եւ ես ձեռքս պիտի
երկնցընեմ. ու պիտի զարնեմ Ե-
գիպտոսը իմ ամէն հրաշքներովս՝
որ անոր մէջը պիտի ընեմ. և յան-
կէ ետքը ձեզ պիտի թողու որ եր-
21 թաք ։ Եւ այս ժողովուրդին
շնորհք պիտի տամ Եգիպտացւոց
առջևը. ու երբոր ելլէք. դատարկ
22 պիտի չելլէք. Հապա ամէն կնիկ
իր դրացիէն ու իր տանը մէջ բնա-
կող կնիկէն՝ արծաթեղէն զարդեր
ու ոսկեղէն զարդեր ու հանդերձներ
պիտի խնդրէ. և անոնք ձեր որդի-
ներուն ու աղջիկներուն վրայ պի-
տի դնէք. ու Եգիպտոսը պիտի
կողոպտէք ։

## ԳԼ. Դ.

1 Մովսէսին գաւազանը օձ կ'ըլլայ. 6 Իր ձեռքը բորոտ կ'ըլլայ ։ 10 Մովսէս ան գործին համար չուզեր Եգիպտոս երթալ ։ 14 Աստուած Ահարոնը անոր օգնական կու տայ ։ 18 Մովսէս կը դառնայ իր Յոթոր աներէն ։ 21 Փարաւոնին խրկուած Աստուծոյ պատգամը ։ 24 Սեփորան իր որդին կը թլփատէ ։ 27 Ահարոն՝ Մովսէսը դիմաւորելու կը խրկուի ։ 31 Ժողովուրդը անոնց կը հաւատան ։

1 Եւ Մովսէս պատասխան տուաւ ու
ըսաւ. Բայց ահա անոնք ինծի
պիտի չհաւատան, ոչ ալ իմ ձայ-
նիս մտիկ պիտի ընեն. քանզի պի-
տի ըսեն թէ՝ Տէրը քեզի չերևցաւ ։
2 Եւ Տէրը ըսաւ անոր. Այդ քու
ձեռքինդ ի՞նչ է. և անիկայ ըսաւ.
3 Գաւազան ։ Եւ ըսաւ անոր. Գե-
տինը ձգէ ան. և անիկայ գետինը
ձգեց. ու օձ եղաւ. և Մովսէս ա-
4 նոր առջևէն փախաւ ։ Եւ Տէրը
ըսաւ Մովսէսին. Ձեռքդ երկըն-
ցուր՝ ու պոչէն բռնէ. և անիկայ
իր ձեռքը երկնցուց ու զանիկայ
բռնեց և գաւազան եղաւ իր ձեռ-
5 քին մէջ. Որ հաւատան թէ ի-
րենց հայրերուն Տէր Աստուածը՝
Աբրահամին Աստուածը Իսահակին
Աստուածը ու Յակոբին Աստուածը
երևցաւ քեզի ։
6 Եւ Տէրը դարձեալ ըսաւ անոր.
Հիմա քու ձեռքդ ծոցդ դիր. ու
անիկայ իր ձեռքը ծոցը դրաւ. և
երբոր դուրս հանեց ահա իր ձեռքը
ձիւնի պէս ճերմակ բորոտ եղաւ ։
7 Եւ Տէրը ըսաւ. Ձեռքդ նորէն
ծոցդ դիր. և անիկայ նորէն իր
ձեռքը ծոցը դրաւ և երբոր դուրս
հանեց, ահա նորէն իր բնական
8 մարմինին պէս եղաւ ։ Եւ ըլլայ
որ եթէ քեզի չհաւատան ու առջի
նշանին ձայնին մտիկ չընեն՝ ետքի
նշանին ձայնին պիտի հաւատան ։

Հմր 17. 20.
ԳԼ. ԺԹ. 9.
ԳԼ. Գ. 15.
Թուոց. ԺԲ. 10. Դ Թագ. Ե. 27.
Բ Օր. ԼԲ. 39. Թուոց. ԺԲ. 13. 14. Դ Թագ. Ե. 14. Մատ. Ը. 3.

9 Իսկ թէ որ աս երկու նշաններուն
ալ չհաւատան, ու քու ձայնիդ ալ
մտիկ չընեն, գետին ջուրէն առ,
ու ցամաք գետինը թափէ. և այն
ջուրը՝ որ գետէն առիր, ցամաքին
վրայ արիւն պիտի ըլլայ ։
10 Եւ Մովսէս ըսաւ Տէրոջը. Ո՛հ,
Տէր իմ, ես ճարտարախօս չեմ,
ոչ երէկուընէ ու մէկալ օրուընէ,
ոչ ալ ծառայիդ հետ խօսելէդ ե-
տև. հապա ես ծանրախօս ու ծան-
11 րալեզու եմ ։ Եւ Տէրը ըսաւ ա-
նոր. Ո՞վ տուաւ մարդուն բերան.
կամ ո՞վ ըրաւ համրը կամ խուլը՝
կամ աչք ունեցողը կամ կոյրը. չէ՞
12 որ ես Տէրս ։ Ուստի գնա հիմա,
ու ես քու բերնիդ հետ պիտի ըլ-
լամ, և քեզի պիտի սորվեցընեմ
13 ինչ որ պիտի խօսիս ։ Եւ անիկայ
ըսաւ. Ո՛հ, Տէր իմ կ'աղաչեմ՝
ան պատգամը որու ձեռքով խրկել
14 կ'ուզես՝ խրկէ ։ Եւ Տէրոջը բար-
կութիւնը բորբոքեցաւ Մովսէսին
դէմ ու ըսաւ. Ղևտացի Ահա-
րոնը քու եղբայրդ չէ՞. ես գիտեմ
որ անիկայ ճարտարախօս է. Նաև
ահա անիկայ քեզ դիմաւորելու
պիտի ելլէ, և քեզ տեսածին պէս իր
15 սրտին մէջ պիտի ուրախանայ ։ Եւ
դուն խօսէ անոր ու անոր բերա-
նը խօսքեր դիր և ես քու բերնիդ
ու անոր բերնին հետ պիտի ըլ-
լամ, ու ձեզի պիտի սորվեցընեմ
16 ինչ որ պիտի ընէք ։ Եւ քու տեղդ
անիկայ թող խօսի ժողովուրդին.
և անիկայ քեզի բերնի տեղ ըլլայ.
ու դուն անոր Աստուծոյ տեղ ըլ-
17 լաս ։ Եւ այս գաւազանը ձեռքդ
առ. որ անով նշանները ընես ։
18 Եւ Մովսէս գնաց. ու իր Յոթոր
աներին դարձաւ ու ըսաւ անոր.
Հիմա երթամ. ու Եգիպտոսի մէջ
եղող եղբայրներուս դառնամ. և
նայիմ թէ տակաւին ո՞ղջ են ա-
նոնք. ու Յոթոր ըսաւ Մովսէսին.
19 Գնա խաղաղութեամբ ։ Եւ Տէրը
Մադիամին մէջ ըսաւ Մովսէսին.
Գնա Եգիպտոս դարձիր. ինչու որ
քու կեանքդ փնտռող բոլոր մար-
20 դիկը մեռան ։ Եւ Մովսէս իր
կնիկը ու իր որդիները առաւ և
իշու վրայ հեծցուց զանոնք ու Ե-
գիպտոսի երկիրը դարձաւ. և Մով-
սէս Աստուծոյ գաւազանը իր ձեռ-
21 քը առաւ ։ Եւ Տէրը ըսաւ Մով-
սէսին. Երբոր դառնաս՝ Եգիպտոս
երթաս, նայէ որ Փարաւոնին առ-
ջևը բոլոր հրաշքները ընես, ո-
րոնք քու ձեռքդ դրի. և ես ա-
նոր սիրտը պիտի պնդացընեմ, ու
22 ժողովուրդը պիտի չթողու ։ Եւ
ըսես Փարաւոնին Տէրը այսպէս
կ'ըսէ. Իսրայէլը իմ որդիս՝ իմ

Ն. Ք. ԴՔ.
1491

ԳԼ. Է. 19.
ԳԼ. Զ. 12. Երեմ. Ա. 6.
Սաղ. ՂԴ. 9.
Եսա. Ծ. 4. Երեմ. Ա. 9. Մատ. Ժ. 19. Մար. ԺԳ. 11. Ղուկ. ԺԲ. 11. 12. ԻԱ. 14. 15.
Տես. Յովն. Ա. 3.
Հմր 27. Թագ. Ժ. 2. 3. 5.
ԳԼ. Է. 1. 2.
Թուոց. ԻԲ. 33. ԻԳ. 5. 12. 16. Բ Օր. ԺԸ. 18. Եսա. ԾԱ. 16. Երեմ. Ա. 9.
Բ Օր. Ե. 31.
ԳԼ. Է. 1. ԺԸ. 19.
Հմր 2.
ԳԼ. Բ. 15. 23. Մատ. Բ. 20.
ԳԼ. ԺԷ. 9. Թուոց. Ի. 8. 9.
ԳԼ. Գ. 20.
ԳԼ. Է. 3. 13. Թ. 12. 35. Ժ. 1. ԺԴ. 8. Բ Օր. Բ. 30. Յեսու. ԺԱ. 20. Եսա. ԿԳ. 17. Յովհ. ԺԲ. 40. Հռով. Թ. 18.
Ովսէ. ԺԱ. 1. Հռով. Թ. 4. Բ Կոր. Զ. 18.
Երեմ. ԼԱ. 9. Յակ. Ա. 18.

Ն․ Ք․ 1491

23 անդրանիկս է ։ Եւ քեզի կ՚ըսեմ․
Իմ որդիս թող տուր՝ որ ինծի պաշ-
տէ ․ բայց թէ որ անիկայ թող
տալ չուզես, ահա՛ նես քու որդիդ՝
մանաւանդ քու անդրանիկդ կ՚ըս-
պաննեմ ։
24 Եւ եղաւ որ ճամբան իջած տեղը՝
Տէրը անոր պատահեցաւ, և ուզեց
25 սպաննել զանիկայ ։ Ուստի Սեպ-
փօրան սուր քար մը առաւ, ու
իր որդւոյն անթլփատութիւնը
թլփատեց, և անոր ոտքերուն ձգեց,
ու ըսաւ Իրաւցընէ դուն ինծի ա-
26 րիւնոտ էրիկ մըն ես ։ Այսպէս
թող տուաւ զանիկայ․ ան ատենը
Սեպփօրան ըսաւ․ Արիւնոտ էրիկ մըն
ես, թլփատութեանը համար ։
27 Եւ Տէրը ըսաւ Ահարոնին․ Գնա
անապատը Մովսէսը դիմաւորե-
լու․ և անիկայ գնաց, ու Աս-
տուծոյ լեռանը վրայ պատահեցաւ
28 անոր, և համբուրեց զանիկայ ։ Եւ
Մովսէս պատմեց Ահարոնին՝ Տէ-
րոջը բոլոր խօսքերը՝ որ խրկեց զին-
քը, և բոլոր նշանները՝ որ իրեն
պատուիրեց ։
29 Եւ Մովսէս ու Ահարոն գացին,
ու Իսրայէլի որդւոցը բոլոր ծերերը
30 ժողվեցին ։ Եւ Ահարոն՝ Տէրոջը
Մովսէսին ըսած բոլոր խօսքերը
զրուցեց անոնց․ ու ժողովուրդին
31 առջեւ նշանները ըրաւ ։ Եւ ժողո-
վուրդը հաւատաց․ և երբոր լսե-
ցին թէ Տէրը այցելութիւն ըրած
է Իսրայէլի որդւոցը, և թէ անոնց
տառապած նեղութիւններուն նայած
է, խոնարհեցան ու երկրպագու-
թիւն ըրին ։

Գլ․ Ժա․ 5։ Ժբ․ 29։ — Թու․ ԻԲ․ 22։ — Ծն․ ԺԷ․ 14։ — Յես․ Ե․ 2, 3։ — Հմր 14։ — Գլ․ Գ․ 1։ — Հմր 15․ 16։ — Հմր 8, 9։ — Գլ․ Գ․ 16։ — Հմր 16։ — Գլ․ Գ․ 18։ Հմր 8, 9։ — Գլ․ Գ․ 16։ — Գլ․ Բ․ 25։ Գ․ 7։ — Ծն․ ԻԴ․ 26։ Գլ․ ԺԲ․ 27։ Ա Մն․ ԻԹ․ 20։

## ԳԼ․ Ե

1 Փարաւոն կը յանդիմանէ Մովսէսը ու Ահարոնը՝ իրենց բերած պատգամին համար, 5 ու Իսրայէլացւոց գործքերը կը ծանրացընէ․ 15 և անոնց գանգատը կը մերժէ ։ 20 Ուստի Իսրայէլացիք կը գանգատին Մովսէսէն ու Ահարոնէն ։ 22 Մովսէսն ալ Աստուծոյ կ՚աղաչէ ։

1 Եւ ետքը Մովսէս ու Ահարոն Փա-
րաւոնին մտան՝ ու ըսին․ Իս-
րայէլին Եհովայ Աստուածը այսպէս
կ՚ըսէ․ Իմ ժողովուրդս թող
տուր՝ որ անապատին մէջ ինծի
2 տօնախմբութիւն ընեն ։ Եւ Փա-
րաւոն ըսաւ․ Եհովան ո՞վ է, որ
անոր խօսքը մտիկ ընելով՝ Իսրա-
յէլը թող տամ․ Եհովան չեմ
ճանչնար, և Իսրայէլն ալ չեմ
3 թողուր ։ Եւ անոնք ըսին․ Եբ-
րայեցւոց Աստուածը մեզի հան-
դիպեցաւ․ հրաման տուր որ իրեք
օրուան ճամբայ անապատը եր-
թանք, ու մեր Եհովայ Աստուծոյն
զոհ մատուցանենք, որ չըլլայ թէ
ժանտախտով կամ սրով մեզի դէմ
4 ելլէ ։ Եւ Եգիպտոսի թագաւորը
ըսաւ անոնց․ Ո՛վ Մովսէս ու Ա-
հարոն՝ ինչո՞ւ ժողովուրդը իրենց
գործքերէն ետ կը թողուք․ Դա-
5 ցէ՛ք աշխատեցէ՛ք ։ Եւ Փարաւոն
ըսաւ․ Ահա հիմա երկրին ժողո-
վուրդը շատ է, ու դուք կը հան-
գըստացընէք զանոնք իրենց գործ-
քերէն ։
6 Եւ Փարաւոն ան օրը ժողովուր-
դին գործավարներուն ու անոնց
վերակացուներուն հրամայեց՝ ըսե-
7 լով․ Երէկուան ու մէկալ օրուան
պէս՝ ալ մէյմըն ալ ժողովուրդին
յարդ մի՛ տաք աղիւս շինելու հա-
մար․ թող իրենք երթան ու իրենց
8 յարդ ժողվեն ։ Եւ աղիւսներուն
թիւը՝ ինչպէս որ առաջ կը շինէին,
անոնց վրայ դրէ՛ք, անկէ մի՛ պակ-
սեցընէք․ ինչու որ ծոյլ են, ա-
նոր համար կը պոռան՝ ըսելով․
Երթանք՝ մեր Աստուծոյն զոհ մա-
9 տուցանենք ։ Թող գործը աս մար-
դոցը վրայ ծանրանայ, որ անով
աշխատին, ու փուճ խօսքերու մը-
10 տիկ չընեն ։ Եւ ժողովուրդին
գործավարները ու վերակացուները
ելան, և ժողովուրդին խօսեցան՝
ըսելով․ Փարաւոնը ասանկ կ՚ըսէ․
11 Ես ձեզի յարդ չեմ տար․ Դուք
գացէք՝ ձեզի յարդ առէք՝ ուր
տեղ որ կրնաք գտնել․ բայց ձեր
գործէն բան մը պիտի չպակսի ։
12 Այսպէս ժողովուրդը Եգիպտոսի
բոլոր երկրին մէջ ցրուեցան՝ յար-
դի տեղ խոզան ժողվելու համար ։
13 Եւ գործավարները կը ստիպէին
զանոնք՝ ըսելով․ Ձեր ամէն օրուան
գործը լմնցուցէք, ինչպէս երբ որ
14 յարդ ունէիք ։ Եւ Փարաւոնին
գործավարները Իսրայէլի որդւոցը
վրայ իրենց դրած վերակացուները
ծեծեցին, ու ըսին․ Ձեր վրայ
դրուած աղիւսներուն սակը երէկ
ու այսօր ինչո՞ւ չլմնցուցիք ա-
ռջինին պէս ։
15 Եւ Իսրայէլի որդւոցը վերակա-
ցուները եկան՝ ու Փարաւոնին բո-
ղոքեցին՝ ըսելով․ Ինչո՞ւ քու ծա-
16 ռաներուդ ասանկ կ՚ընես ։ Քու
ծառաներուդ յարդ չեն տար, ու
մեզի կ՚ըսեն թէ՝ Աղիւսներ շինե-
ցէք․ և ահա՛ քու ծառաներդ ծեծ
կերան, ու յանցանքը քու ժողո-
17 վուրդինդ է ։ Եւ անիկայ ըսաւ․
Ծոյլ էք դուք՝ ծոյլ․ անոր հա-
մար կ՚ըսէք թէ՝ Երթանք՝ Տէրոջը
18 զոհ մատուցանենք ։ Ուստի դա-
ցէ՛ք հիմա բանեցէ՛ք, ու ձեզի
յարդ պիտի չտրուի, բայց աղիւ-
19 սներուն սակը պիտի տաք ։ Եւ Իս-
րայէլի որդւոցը վերակացուները
ինքզինքնին փորձանքի մէջ տե-
սան, երբոր ըսուեցաւ թէ՝ Ամէն

Գլ․ Ժ․ 9։ — Դ Թագ․ ԺԸ․ 35։ Յոբ․ ԻԱ․ 15։ — Գլ․ Դ․ 19։ — Գլ․ Գ․ 18։

Ն․ Ք․ 1491 — Գլ․ Ա․ 11։ — Գլ․ Ա․ 7, 9։ — Գլ․ Ա․ 11։

Ն․ Ք․ ՉՖ․
1491

ը Գլ․ Զ․ Ց։

ի Ծն․ ԼԴ․ 30։ ա Թագ․ ԺԳ․ 4։ Իէ․ 12։ բ Թագ․ Ժ․ 6։ ա Մն․ ԺԹ․ 6։

ա Գլ․ Գ․ 19։
բ Գլ․ Ժա․ 1։ Ժբ․ 31, 33, 39։
գ Ծն․ Ժէ․ 1։ Լե․ 11։ Խը․ 3։
դ Գլ․ Գ․ 14։ Սաղ․ ․ Կը․ 4։ Ճգ․ 18։ Յով․ Ը․ 58։ Յայտ․ Ա․ 4։
ե Ծն․ Ժե․ 18։ Ժէ․ 4, 7։
զ Ծն․ Ժէ․ 8։ Իը․ 4։
է Գլ․ Բ․ 24։ ը Հմր 2, 3, 29։
ը Գլ․ Գ․ 17։ Է․ 4։ բ Օր․ Իզ․ 8։ Սաղ․ Ճա․ 6։ Ճլ․ 11, 12։
թ Գլ․ Ժե․ 13։ բ Օր․ Է․ 8։ ա Մն․ Ժէ․ 21։ Նեեմ․ Ա․ 10։
ժ բ Օր․ Դ․ 20։ Է․ 6։ ԺԴ․ 2։ Իզ․ 18։ բ Թագ․ Է․ 24։
ի Ծն․ Ժէ․ 7, 8։ Գլ․ ԻԹ․ 45, 46։ բ Օր․ ԻԹ․ 13։ Յայտ․ Իա․ 7։
լ Գլ․ Ե․ 4, 5։ Սաղ․ Ճա․ 6
խ Ծն․ Ժե․ 18։ Իզ․ 3։ Իը․ 13։ Լե․ 12։
* Եբր․ ձեռքս վեր վերցուցի․ տես Ծն․ ԺԴ․ 22։ բ Օր․ Լբ․ 40։

օրուան ձեր վրայ դրուած աղիւս-
20 ներուն թիւէն չպակսեցընէ՛ք ։ Եւ
Փարաւոնէն դուրս ելած ատեննին՝
հանդիպեցան Մովսէսին ու Ահա-
րոնին, որ զիրենք դիմաւորելու կը
21 սպասէին ․ ըՈւ ըսին անոնց ․ Տէրը
ձեզի նայի ու դատէ ․ ինչու որ
ի գարշելի ըրիք մեր հոտը Փարաւո-
նին առջեւը, ու անոր ծառաներուն
առջեւը, մեզ սպաննելու համար
անոնց ձեռքը սուր տալով ։
22 Եւ Մովսէս Տէրոջը դարձաւ՝ ու
ըսաւ ․ Ո՛վ Տէր, ինչո՞ւ աս ժո-
ղովուրդը փորձանքի մէջ ձգեցիր,
23 և իս ինչո՞ւ խրկեցիր ․ Վասն զի
քանի որ քու անունովդ Փարաւո-
նին զրուցելու եկեր եմ, անիկայ աս
ժողովուրդը փորձանքի մէջ ձգեց ․
ու դուն բնաւ չփրկեցիր քու ժո-
ղովուրդդ ։

ԳԼ․ Զ

1 Աստուած իր խոստմունքը կը նորոգէ՝ իր Ե-
հովայ անունը յայտնելով ։ 14 Ազգաբանու-
թիւն Ռուբէնին, 15 Շմաւոնին, 16 Ղեւիին՝
ուսկից որ Մովսէսը ու Ահարոնը եղան ։

1 Եւ Տէրը ըսաւ Մովսէսին ․ Փա-
րաւոնին ինչ ընելիքս հիմա պի-
տի տեսնես ․ որ ա հզօր ձեռքով
պիտի թողու զանոնք, ու հզօր
ձեռքով բ պիտի վռնտէ զանոնք
2 իր երկրէն ։ Եւ Աստուած խօսե-
ցաւ Մովսէսին՝ ու ըսաւ անոր ․
3 Ես եմ Եհովան ․ Ես Աբրահամին՝
Իսահակին ու Յակոբին գ Ամենա-
կարող Աստուծոյ անունով երեւ-
ցայ ․ բայց իմ դ Եհովայ անունովս
4 անոնց չյայտնուեցայ ։ ե Նաեւ ա-
նոնց հետ իմ ուխտս հաստատեցի,
զ որ անոնց տամ Քանանու երկի-
րը, անոնց օտարութեան երկիրը՝
5 ուր որ պանդխտացան ։ Եւ է լը-
սեցի ալ Իսրայէլի որդւոցը հառա-
չանքը, որ Եգիպտացիները ծառա-
յեցուցին ․ ու իմ ուխտս յիշեցի ։
6 Անոր համար Իսրայէլի որդւոցը ը-
սէ ․ ըԵս եմ Եհովան, և թ Ես ձեզ
Եգիպտացւոց ծանր գործքերուն
տակէն պիտի հանեմ, ու ձեզ
անոնց ծառայութենէն պիտի ա-
զատեմ, և ժ ձեզ երկընցած բա-
զուկով ու մեծ դատաստաններով
7 պիտի փրկեմ, Եւ ի ձեզ ինծի
ժողովուրդ պիտի առնեմ, ու
լ ձեզի Աստուած պիտի ըլլամ և
պիտի գիտնաք որ ձեզ խ Եգիպտա-
ցւոց ծանր գործքերուն տակէն հա-
նող Տէրը՝ ձեր Աստուածը ես եմ ։
8 Եւ ձեզ ան երկիրը պիտի տանիմ,
որն որ Աբրահամին՝ Իսահակին ու
Յակոբին տալու ծ* երդում ըրի", ու
ան ձեզի ժառանգութիւն ըլլալու
9 պիտի տամ ․ ես եմ Տէրը ։ Եւ
Մովսէս Իսրայէլի որդւոցը ասանկ

զրուցեց ․ կ բայց անոնք հոգիի նե-
ղութենէն ու գործին ծանրութե-
նէն մտիկ չըրին Մովսէսին ։
10 Եւ Տէրը խօսեցաւ Մովսէսին՝ ը-
11 սելով ․ Մտիր՝ խօսէ Եգիպտոսի
Փարաւոն թագաւորին՝ որ Իսրա-
յէլի որդիքը իր երկրէն արձակէ ։
12 Եւ Մովսէս խօսեցաւ Տէրոջը
առջեւը՝ ըսելով ․ Ահա Իսրայէլի
որդիքը հ ինծի մտիկ չըրին, հապա
Փարաւոնը ինծի ի՞նչպէս մտիկ պի-
տի ընէ ․ որ յ Ես † ծանրալեզու եմ ։
13 Եւ Տէրը խօսեցաւ Մովսէսին ու Ա-
հարոնին, ու հրաման ըրաւ անոնց՝
որ Իսրայէլի որդւոցը ու Եգիպտոսի
Փարաւոն թագաւորին երթան, Իս-
րայէլի որդիքը Եգիպտոսի երկրէն
հանելու համար ։
14 Անոնց հայրերուն տուներուն
գլուխները ասոնք են ․ ն Իսրայէլին
անդրանկանը Ռուբէնին որդիքը՝
Ենովք, Փաղղուս, Եսրոն և Քար-
մի ․ ասոնք են Ռուբէնին տոհմերը ։
15 Եւ շ Շմաւոնին որդիքը՝ Յամուէլ,
Յամին, Ոհադ, Յաքին, Սահառ,
և Քանանացի կնկանը որդին Սա-
ւուղ ․ ասոնք են Շմաւոնին տոհ-
16 մերը ։ Եւ ո Ղեւիին որդւոցը ա-
նունները իրենց ծնունդներուն հա-
մեմատ ասոնք են ․ Գերսոն, Կա-
հաթ և Մերարի ։ Եւ Ղեւիին
կենացը տարիները հարիւր երսուն-
17 ուեօթը տարի եղան ։ չ Գերսոնին
որդիքը իրենց տոհմերուն համե-
18 մատ՝ Ղոբենի ու Սեմէի էին ։ Եւ
պ Կահաթին որդիքը՝ Ամրամ, Իսա-
հառ, Քեբրոն ու Ոզիէլ ։ Եւ Կա-
հաթին կենացը տարիները հարիւր
19 երսունուիրեք տարի եղան ։ Եւ
ջ Մերարիին որդիքը՝ Մոողի ու
Մուսի ․ Ղեւիին տոհմերը իրենց
ծնունդներուն համեմատ ասոնք են ։
20 Եւ ռ Ամրամ իր հօրաքոյրը Յոքա-
բեդը իրեն կնիկ առաւ, որ ծնաւ
իրեն Ահարոնը ու Մովսէսը ։ Եւ
Ամրամին կենացը տարիները հարիւր
21 երսունուեօթը տարի եղան ։ Եւ
ս Իսահառին որդիքը՝ Կորխ, Նա-
22 փեկ և Զեքրի ։ Եւ վ Ոզիէլին որ-
դիքը՝ Միսայէլ, Եղիսափան և
23 Սեթրի ։ Եւ Ահարոն իրեն կնիկ ա-
ռաւ Ամինադաբին աղջիկը՝ Նաա-
սոնին քոյրը Եղիսաբեթը, և ծնաւ
իրեն տ Նադաբը ու Աբիուդը, Եղի-
24 ազարը ու Իթամարը ։ Եւ ր Կորխին
որդիքը՝ Ասիր, Եղկանա և Աբիա-
սափ ․ ասոնք են Կորխեցւոց տոհ-
25 մերը ։ Եւ Ահարոնին որդին Եղիա-
զարը Փուտիէլին աղջիկներէն իրեն
կնիկ առաւ ․ և ց ծնաւ իրեն Փենե-
հէսը ․ ասոնք են Ղեւտացւոց հայ-
րերուն գլուխները իրենց տոհմե-
րուն համեմատ ։

Ն․ Ք․ ՉՖ․
1491

կ Գլ․ Ե․ 21։

հ Հմր 9։

յ Հմր 30։ Գլ․ Դ․ 10։ Երեմ․ Ա․ 6։
† Եբր․ անթլփատ պրկունքներով

ն Ծն․ Խզ․ 9։ ա Մն․ Ե․ 3։

շ ա Մն․ Դ․ 24։ Ծն․ Խզ․ 10։

ո Ծն․ Խզ․ 11։ Թուե․ Գ․ 17։ ա Մն․ Զ․ 1, 16։

1619

չ ա Մն․ Զ․ 17։ Իգ

պ Թուե․ Իզ․ 57։ ա Մն․ Զ․ 2, 18։

ջ ա Մն․ Զ․ 19։ Իգ․ 21։

ռ Գլ․ Բ․ 1, 2։ Թուե․ Իզ․ 59։

ս Թուե․ Ժզ․ 1։ ա Մն․ Զ․ 37, 38։

վ Ղև․ Ժ․ 4։ Թուե․ Գ․ 30։

Իբր 1530

ւ Հռութ․ Դ․ 19, 20։ ա Մն․ Բ․ 10։ Մատ․ Ա․ 4։

տ Ղև․ Ժ․ 1։ Թուե․ Դ․ 2։ Իզ․ 60։ ա Մն․ Զ․ 3։ Իդ․ 1։

ր Թուե․ Իզ․ 11։

ց Թուե․ Իե․ 7, 11։ Յեսու․ Իդ․ 33։

Ն. Ք. ԳՔ. 1491

26 Ասոնք են այն Ահարոնը ու Մովսէ-
սը՝ [տ] որոնց ըսաւ Տէրը . Իսրայէլի
որդիքը իրենց [ր] զօրքերովը Եգիպ-
27 տոսի երկրէն հանեցէք ։ Իսրայէլի
որդիքը [ց] Եգիպտոսէն հանելու հա-
մար՝ [ւ] Եգիպտոսի Փարաւոն թա-
գաւորին խօսողները ասոնք են . աս
Մովսէսը ու Ահարոնը ։
28 Եւ այն օրը որ Տէրը խօսեցաւ
Մովսէսին՝ Եգիպտոսի երկրին մէջ ,
29 Այն ատենը Տէրը Մովսէսին զրուցեց
ըսելով . [փ] Ես եմ Եհովան . [ք] ամէն
բնչ որ քեզի կ'ըսեմ , Եգիպտոսի
30 Փարաւոն թագաւորին խօսէ ։ Եւ
Մովսէս Տէրոջը առջևը ըսաւ . Ահա
[օ] ես [*] ծանրալեզու եմ , ու Փա-
րաւոն ի՞նչպէս մտիկ պիտի ընէ
ինծի ։

ԳԼ. Է

4 Աստուած կը քաջալերէ Մովսէսը որ համար-
ձակ Փարաւոնին առջևը ելլէ ։ 7 Մովսէսին
տարիքը ։ 8 Անոր գաւազանը օձ կ'ըլլայ ։ 11
Մոգերն ալ նոյն բանը կ'ընեն ։ 13 Փարա-
ւոնին սիրտը կը կարծրանայ ։ 19 Գետին
ջուրը արիւն կը դառնայ ։

1 Եւ Տէրը ըսաւ Մովսէսին . Նայէ ,
քեզ [ա] Փարաւոնին աստուած
ըրի , ու քու եղբայրդ Ահարոնը
2 [բ] քու մարգարէդ ըլլայ . Դուն
[գ] խօսիս այն ամէնը՝ որ քեզի կը
հրամայեմ , և քու եղբայրդ Ահա-
րոնը թող խօսի Փարաւոնին՝
որ Իսրայէլի որդիքը իր երկրէն
3 արձակէ ։ Եւ ես [դ] Փարաւոնին սիր-
տը պիտի պնդացընեմ , ու իմ
[ե] նշաններս և հրաշքներս Եգիպտո-
սի երկրին մէջ [զ] պիտի շատցընեմ ։
4 Եւ Փարաւոն ձեզի մտիկ պիտի չը-
նէ . ու [է] ես իմ ձեռքս Եգիպտոսի
վրայ պիտի ձգեմ , և իմ զօրքերս՝
իմ ժողովուրդս Իսրայէլի որդիքը
[ը] մեծ դատաստաններով պիտի հա-
5 նեմ Եգիպտոսի երկրէն ։ Եւ [թ] երբ-
որ իմ ձեռքս Եգիպտոսի վրայ եր-
կընցընեմ՝ ու Իսրայէլի որդիքը ա-
նոնց մէջէն հանեմ , [ժ] պիտի գիտնան
Եգիպտացիք՝ թէ ես եմ Տէրը ։
6 Եւ Մովսէս ու Ահարոն [ի] Տէրոջը ի-
րենց պատուիրածին պէս ըրին . ա-
7 նանկ ըրին ։ Եւ Մովսէս ութսուն
տարեկան էր , ու Ահարոն ութ-
սուն երեք տարեկան էր , երբոր
Փարաւոնին հետ խօսեցան ։
8 Եւ Տէրը խօսեցաւ Մովսէսին ու
9 Ահարոնին՝ ըսելով . Երբոր Փարա-
ւոն ձեզի խօսի՝ ու ըսէ . [խ] Ձեզի
համար հրաշք ցուցուցէք . այն ա-
տենը Ահարոնին ըսես թէ՝ [ծ] Գա-
ւազանդ առ , ու Փարաւոնին առ-
ջևը նետէ . ան իսկոյն վիշապ պիտի
10 ըլլայ ։ Եւ Մովսէս ու Ահարոն
մտան Փարաւոնին՝ ու [կ] Տէրոջը
պատուիրածին պէս ըրին . և Ահա-
րոն իր գաւազանը նետեց Փարաւո-
նին առջևը՝ ու անոր ծառաներուն
11 առջևը , և [հ] վիշապ եղաւ ։ Եւ Փա-
րաւոն ալ իմաստունները ու [ձ] կա-
խարդները կանչեց . և Եգիպտոսի
մոգերը՝ անոնք ալ [ղ] իրենց կախար-
12 դութիւններովը անանկ ըրին . Եւ
ամէն մէկը իր գաւազանը նետեց ,
ու անոնք վիշապներ եղան . բայց
Ահարոնին գաւազանը անոնց գա-
13 ւազանները կլլեց ։ Եւ Փարաւոնին
սիրտը կարծրացաւ , ու անոնց մը-
տիկ չըրաւ , [մ] ինչպէս որ Տէրը զը-
րուցեր էր ։
14 Եւ Տէրը ըսաւ Մովսէսին . [յ] Փա-
րաւոնին սիրտը խստացաւ . ժողո-
15 վուրդը արձակել չուզեր ։ Առ-
տուանց Փարաւոնին գնա . ահա
անիկայ դէպ 'ի ջուրը կ'ելլէ . ու
դուն գետին եզերքը անոր դիմացը
կայնէ , և այն [ն] օձ դարձած գաւա-
16 զանը ձեռքդ առ , Ու ըսէ անոր .
[շ] Եբրայեցւոց Եհովայ Աստուածը
իս քեզի խրկեց՝ ըսելով . Արձակէ
իմ ժողովուրդս՝ [ո] որ զիս պաշտեն
անապատին մէջ . և ահա մինչև հի-
17 մա մտիկ չըրիր ։ Այսպէս կ'ըսէ
Տէրը . [չ] Ասով գիտնաս թէ ես եմ
Տէրը . ահա ես իմ ձեռքս եղած
գաւազանով գետին մէջի ջուրերուն
պիտի զարնեմ , ու [պ] արիւն [ջ] պիտի
18 դառնան . Եւ գետին մէջ եղած
ձուկերը պիտի մեռնին , ու գետը
պիտի հոտի . և Եգիպտացիք [ռ] պի-
տի զզուին գետէն ջուր խմելու ։
19 Եւ Տէրը ըսաւ Մովսէսին . Ըսէ
Ահարոնին . Գաւազանդ առ , ու
[ս] ձեռքդ երկընցուր Եգիպտացւոց
ջուրերուն վրայ , անոնց առունե-
րուն վրայ , անոնց գետերուն վրայ ,
ու անոնց լիճերուն վրայ , և անոնց
բոլոր ջրակուտակներուն վրայ՝ որ
արիւն ըլլան . ու Եգիպտոսի բոլոր
երկրին մէջ՝ փայտէ ու քարէ ա-
մաններուն մէջի ջուրերը արիւն ըլ-
20 լան ։ Եւ Մովսէս ու Ահարոն Տէ-
րոջը պատուիրածին պէս ըրին . և
[վ] գաւազանը վերցուց , ու Փարաւո-
նին առջևը և անոր ծառաներուն
առջևը գետին մէջի ջուրերուն զար-
կաւ , և գետին մէջի բոլոր [տ] ջուրե-
21 րը արիւն դարձան ։ Եւ գետին մէջ
եղած ձուկերը մեռան , ու գետը
հոտեցաւ , և Եգիպտացիք [ր] չէին
կրնար գետէն ջուր խմել . ու Եգիպ-
տոսի բոլոր երկրին մէջ արիւն կար ։
22 [ց] Եւ Եգիպտոսի մոգերն ալ իրենց
կախարդութիւններովը անանկ ը-
րին . և Փարաւոնին սիրտը կարծ-
րացաւ , ու [ւ] Տէրոջը ըսածին պէս՝
23 անոնց մտիկ չըրաւ ։ Եւ Փարաւոն
դարձաւ՝ ու իր տունը եկաւ , ու
24 [†] աս ալ անոր սրտին չդպաւ" ։ Եւ
բոլոր Եգիպտացիք գետին բոլոր-

Ն. Ք. ԳՔ. 1491
տ Հմր 13 ։
ր Գլ. է. 4 ժբ. 17, 51 Թուոց. լգ. 1 ։
ց Հմր 13 Գլ. լբ. 7 լգ. 1 Սաղ. ճե. 20 ։
ւ Գլ. ե. 1, 3 ։ է. 10 ։
փ Հմր 2 ։
ք Հմր 11 Գլ. է. 2 ։
օ Հմր 12 Գլ. դ. 10 ։
* Եբր. անթլփատ պռունկներով
ա Գլ. դ. 16 Երեմ. ա. 10 ։
բ Գլ. դ. 16 ։
գ Գլ. դ. 15 ։
դ Գլ. դ. 21 ։
ե Գլ. դ. 7 ։
զ Գլ. ժա. 9 ։
է Գլ. ժ. 1 ժա. 9 ։
ը Գլ. զ. 6 ։
թ Գլ. դ. 20 ։
ժ Հմր 17 Գլ. ը. 22 ժդ. 4, 18 Սաղ. թ. 16 ։
ի Հմր 2 ։
1491
լ Բ Օր. իթ. 5 լա. 2 Գործ. է. 23, 30 ։
խ Եսա. է. 11 Յոհ. բ. 18 զ. 30 ։
ծ Գլ. դ. 2, 17 ։
կ Հմր 9 ։

Ն. Ք. ԳՔ. 1491
հ Գլ. դ. 3 ։
ձ Բ Տիմ. գ. 8 ։
ղ Ծն. խա. 8 ։
ճ Հմր 22 Գլ. ը. 7, 18 ։
մ Գլ. դ. 21 Հմր 4 ։
յ Գլ. ը. 15 ժ. 1, 20, 27 ։
ն Գլ. դ. 2, 3 Հմր 10 ։
շ Գլ. գ. 18 ։
ո Գլ. գ. 12, 18 ե. 1, 3 ։
չ Գլ. ե. 2 Հմր 5 ։
պ Յայտ. ժզ. 4, 6 ։
ջ Գլ. դ. 9 ։
ռ Հմր 24 ։
ս Գլ. ը. 5, 6, 16 թ. 22 ժ. 12, 21 ժդ. 21, 26 ։
վ Գլ. ժէ. 5 ։
տ Սաղ. հը. 44 ճե. 29 ։
ր Հմր 18 ։
ց Հմր 11 ։
ւ Հմր 3 ։
† Եբր. իր սիրտը ասոր ալ չդրաւ ։

Ն. Ք. ԴՔ.
1491

տիքը փորեցին խմելու ջուրի հա-
մար . վասնզի որ գետին ջուրէն չէին
25 կրնար խմել ։ Եւ Տէրը գետը զար-
նելէն ետքը՝ եօթը օրը լմնցաւ ։

ԳԼ. Ը

1 Եգիպտոսին վրայ գորտեր կը խրկուին ։ 8 Փարաւոն կ'աղաչէ Մովսէսին ։ 12 Մովսէսն ալ աղօթքով զանոնք կը վերցընէ ։ 16 Երբը փոշին դէպ 'ի երկինքը կը ցանէ . ու մուն կ'ըլլայ . իսկ մոգերը չեն կրնար նոյնը ընել ։ 20 Շանաճանճին հարուածը ։ 25 Փարաւոն քիչ մը կը համոզուի . 32 սակայն նորէն կը խստանայ ։

1 Եւ Տէրը ըսաւ Մովսէսին . Փարա-
ւոնին մտիր , ու ըսէ անոր . Տէ-
րը այսպէս կ'ըսէ . Արձակէ իմ ժո-
2 ղովուրդս ա որ պաշտեն զիս ։ Եւ թէ
որ բ զանոնք արձակել չուզես , ահա
ես քու բոլոր սահմաններդ գ գորտե-
3 րով պիտի զարնեմ ։ Եւ գետը շատ
գորտեր պիտի հանէ , ու անոնք պի-
տի ելլեն , ու քու տանդ՝ և դ անկո-
ղինիս սենեակիդ՝ ու անկողինիդ՝ և
քու ծառաներուդ տուներուն՝ և
քու ժողովուրդիդ՝ ու քու թո-
նիրներուդ՝ և խմորի տաշտերուդ
4 մէջ պիտի մտնեն ։ Եւ գորտերը
քու վրադ՝ և ժողովուրդիդ վրայ՝
ու բոլոր ծառաներուդ վրայ պիտի
ելլեն ։

5 Եւ Տէրը ըսաւ Մովսէսին . Ա-
հարոնին այսպէս ըսէ . Առուներուն
վրայ՝ գետերուն վրայ՝ ու լիճերուն
վրայ ե ձեռքդ երկնցուր քու գա-
ւազանովդ , ու Եգիպտոսի երկրին
6 վրայ գորտեր հանէ ։ Եւ Ահարոն
երկնցուց իր ձեռքը Եգիպտոսի
ջուրերուն վրայ . և զ գորտերը ե-
լան՝ ու Եգիպտոսի երկիրը ծածկե-
7 ցին ։ է Եւ մոգերն ալ իրենց կա-
խարդութիւններովը անանկ ըրին ,
ու Եգիպտոսի երկրին վրայ գորտեր
հանեցին ։

8 Եւ Փարաւոն կանչեց Մովսէսը
ու Ահարոնը՝ և ըսաւ . ը Աղաչե-
ցէ՛ք Տէրոջը՝ որ ինծմէ ու իմ ժո-
ղովուրդէս վերցընէ գորտերը , ու
ժողովուրդը պիտի արձակեմ որ
9 Տէրոջը զոհ մատուցանեն ։ Եւ
Մովսէս ըսաւ Փարաւոնին . Հրա-
մայէ ինծի , թէ ե՞րբ քեզի համար՝
ու ծառաներուդ համար և ժողո-
վուրդիդ համար աղաչեմ , որ քեզ-
մէ ու քու տուներէդ գորտերը կոր-
սուին , ու միայն գետին մէջը մնան ։
10 Եւ անիկայ ըսաւ . Վաղը ։ Եւ
ինքը ըսաւ . Քու խօսքիդ պէս ըլ-
լայ , որ գիտնաս թէ՝ մեր թ Աստուծոյ
11 Աստուծոյն պէս մէկը չկայ . Եւ
քեզմէ՝ ու քու տուներէդ՝ և քու
ծառաներէդ՝ ու քու ժողովուր-
դէդ գորտերը պիտի վերնան . մի-
12 այն գետին մէջը պիտի մնան ։ Եւ
Մովսէս ու Ահարոն՝ Փարաւոնին
քովէն ելան . ու Մովսէս ժ Տէրոջը
աղաղակեց ան գորտերուն համար՝
որ Փարաւոնին վրայ բերեր էր ։
13 Եւ Տէրը Մովսէսին ըսածին պէս
ըրաւ . ու տուներէն՝ գիւղերէն և
14 արտերէն գորտերը մեռան ։ Եւ
դէզ դէզ ժողվեցին զանոնք , ու
15 երկիրը հոտեցաւ ։ Բայց երբոր
Փարաւոն ի հանգստութիւն ըլլալը
տեսաւ , լ իր սիրտը խստացուց , ու
անոնց մտիկ չըրաւ՝ Տէրոջը ըսա-
ծին պէս ։

16 Եւ Տէրը ըսաւ Մովսէսին . Ըսէ
Ահարոնին . Քու գաւազանդ եր-
կնցուր , ու երկրի հողին զարկ ,
որ Եգիպտոսի բոլոր երկրին վրայ
17 * մուն ըլլայ ։ Եւ անանկ ըրին .
քանզի Ահարոն իր գաւազանովը իր
ձեռքը երկնցուց , ու երկրի հողին
զարկաւ , և խ մարդոց վրայ ու ա-
նասուններուն վրայ մուն եղաւ .
Եգիպտոսի բոլոր երկրին վրայ երկ-
18 րին բոլոր հողը մուն եղաւ ։ Եւ
ծ մոգերն ալ իրենց կախարդու-
թիւններովը այնպէս ըրին՝ որ մու-
ներ հանեն , բայց կ չկրցան . այսպէս
մարդոց ու անասուններուն վրայ
19 մուն եղաւ ։ Եւ մոգերը ըսին Փա-
րաւոնին . Աս հ Աստուծոյ մատն է .
և Փարաւոնին ձ սիրտը կարծրա-
ցաւ , ու անոնց մտիկ չըրաւ՝ Տէ-
րոջը ըսածին պէս ։

20 Եւ Տէրը ըսաւ Մովսէսին . ղ Առ-
տուանց կանուխ ելի՛ր , ու Փարա-
ւոնին առջևը կայնէ . (ահա անի-
կայ դէպ 'ի ջուրը կ'ելլէ .) և ըսէ
անոր . Տէրը այսպէս կ'ըսէ . ճ Ար-
ձակէ իմ ժողովուրդս որ զիս պաշ-
21 տեն . Հապա թէ որ իմ ժողո-
վուրդս չարձակես , ահա ես քու
վրադ՝ ու քու ծառաներուդ վրայ՝
և քու ժողովուրդիդ վրայ՝ ու քու
տուներուդ վրայ շանաճանճ պիտի
խրկեմ , և Եգիպտացւոց տուները
շանաճանճով պիտի լեցուին , նաև
ան գետինը՝ որուն վրայ անոնք կը
22 քալեն ։ Եւ ան օրը իմ ժողովուր-
դիս բնակած մ Գեսեմի երկիրը պի-
տի որոշեմ , ու հոն շանաճանճ պի-
տի չըլլայ . որ գիտնաս թէ երկրին
23 մէջտեղը ես եմ Տէրը ։ Եւ իմ ժո-
ղովուրդիս ու քու ժողովուրդիդ
մէջ խտրոց մը պիտի դնեմ . վաղը
24 աս նշանը պիտի ըլլայ ։ Եւ Տէրը
այնպէս ըրաւ . ու Փարաւոնին
տանը՝ և անոր ծառաներուն տու-
ներուն՝ ու Եգիպտոսի բոլոր երկ-
րին վրայ յ շատ շանաճանճ եկաւ .
ու շանաճանճին պատճառովը եր-
կիրը աւրուեցաւ ։
25 Եւ Փարաւոն կանչեց Մովսէսը
ու Ահարոնը՝ և ըսաւ . Գացէք
ձեր Աստուծոյն զոհ մատուցէք

ա Գլ. գ. 12, 18։
բ Գլ. ե. 14։ Թ. 2։
գ Յայտ. ժզ. 13։
դ Սաղ. ճե. 30։
ե Գլ. է. 19։
զ Սաղ. հը. 45։ ճե. 30։
է Գլ. է. 11։
ը Գլ. Թ. 28։ Ժ. 17։ Թուոց. իա. 7։ Գ Թագ. ժգ. 6։ Գործ. Ը. 24։
թ Գլ. Թ. 14։ Բ Օր. լդ. 26։ Բ Թագ. է. 22։ Ա Մն. ժէ. 20։ Սաղ. հզ. 8։ Ես. խզ. 9։ Երեմ. ժ. 6, 7։

ժ Հմր 30։ Գլ. Թ. 33։ Ժ. 18։ Լբ. 11։ Յակ. ե. 16, 17, 18։
ի Ժող. ը. 11։
լ Գլ. է. 14։
* Կամ ոջիլ
խ Սաղ. ճե. 31։
ծ Գլ. է. 11։
կ Ղու. ժ. 18։ Բ Տիմ. գ. 8, 9։
հ Ա Թագ. զ. 3, 9։ Սաղ. ը. 3։ Մատ. ժբ. 28։ Ղու. ժա. 20։
ձ Հմր 15։
ղ Գլ. է. 15։
ճ Հմր 1։
մ Գլ. Թ. 4, 6, 26։ Ժ. 23։ Ժա. 6, 7։ Ժբ. 13։
յ Սաղ. հը. 45։ ճե. 31։

Ն. Ք. ԳՔ. 1491

Ն Ծն. խգ. 32 ։ խզ. 34 ։ Բ Օր. Է. 25. 26 ։ Ժբ. 31 ։

26 … երկրին մէջ ։ Եւ Մովսէս
ըսաւ . Արժան չէ ասանկ ընել .
ինչու որ Ն Եգիպտացւոց գար-
շելի եղածները՝ Տէրոջը մեր
Աստուծոյն զոհ պիտի մատու-
ցանենք . թէ որ Եգիպտացւոց
գարշելի եղածները իրենց աչքին
առջևը զոհ մատուցանելու ըլլանք ,
Ն Գլ. Գ. 18 ։
27 պիտի չքարկոծե՞ն մեզ ։ Մենք Ն ի-
րեք օրուան ճամբայ պիտի երթանք
անապատին մէջ , ու զոհ պիտի մա-
տուցանենք մեր Տէր Աստուծոյն ,
Գլ. Գ. 12 ։
ինչպէս որ ինքը մեզի պատուիրէ ։
28 Եւ Փարաւոն ըսաւ . Ես ձեզ թող
կու տամ որ երթաք անապատին
մէջ ձեր Եհովայ Աստուծոյն զոհ մա-
տուցանէք միայն թէ շատ հեռու
Ն Հմր 8 ։ Գլ. Թ. 28 ։ Գ Թագ. Ժգ. 6 ։
չերթաք ․ ինծի համար աղաչեցէք ։
29 Եւ Մովսէս ըսաւ . Ահա ես քու
քովէդ կ'ելլեմ ու Տէրոջը կ'աղա-
չեմ որ վաղը Փարաւոնէն՝ անոր
ծառաներէն՝ ու անոր ժողովուրդէն
շանաճանճը երթայ . բայց Փարա-
Դ Հմր 15 ։
ւոն ղ մէյմըն ալ [illegible] չխաբէ՝ ժո-
ղովուրդը թող չտալով Տէրոջը զոհ
30 մատուցանելու ։ Եւ Մովսէս Փա-
Ք Հմր 12 ։
րաւոնին քովէն ելաւ , ու ՔՏէրոջը
31 աղաչեց ։ Եւ Տէրը Մովսէսին խօս-
քին պէս ըրաւ , ու Փարաւոնէն՝
անոր ծառաներէն և անոր ժողո-
վուրդէն շանաճանճը վերցուց . մէկ
32 հատ մըն ալ չմնաց ։ Եւ Փարաւոն
Ռ Հմր 15 ։ Գլ. Դ. 21 ։
ան անգամին ալ Ռ իր սիրտը խստա-
ցուց ու ժողովուրդը չարձակեց ։

ԳԼ. Թ

1 Անասնոց մահը ։ 8 Ուռեցքներու ու խաղաւարտներու հարուածքը ։ 22 Կարկուտը ։ 27 Փարաւոն կարկուտին համար կ'աղաչէ Մովսէսին . 35 սակայն դարձեալ անոր սիրտը կը կարծրանայ ։

Ռ Գլ. Ը. 1 ։
1 Եւ Տէրը ըսաւ Մովսէսին . Ռ Փա-
րաւոնին մտիր , ու խօսէ անոր .
Եբրայեցւոց Տէր Աստուածը այս-
պէս կ'ըսէ . Արձակէ իմ ժողո-
2 վուրդս որ ինծի պաշտեն ։ Քանզի թէ
Բ Գլ. Ը. 2 ։
որ Բ զանոնք արձակել չուզես , ու
տակաւին պինդ բռնես զանոնք ,
Փ Գլ. Է. 4 ։
3 Ահա Փ Տէրոջը ձեռքը դաշտին մէջ
եղած քու հօտերուդ վրայ ըլլալով ,
ձիերուն՝ էշերուն՝ ուղտերուն՝ ար-
ջառներուն ու ոչխարներուն վրայ
սաստիկ կոտորած մը պիտի ըլլայ ։
Տ Գլ. Ը. 22 ։
4 Եւ Տ Տէրը Իսրայելի հօտերուն՝ ու
Եգիպտոսի հօտերուն մէջտեղը պի-
տի զատէ . և Իսրայելի որդւոցը մէկ
5 [illegible]ը պիտի չմեռնի ։ Եւ Տէրը
ժամանակ որոշեց՝ ըսելով . Վաղը
Տէրը աս բանը պիտի ընէ երկրին
6 վրայ ։ Եւ հետևեալ օրը Տէրը աս
բանը ըրաւ , ու Եգիպտացւոց
Ք Սաղ. Հը. 50 ։
Ք բոլոր հօտերը մեռան . բայց Իս-
րայելի որդւոցը հօտերէն մէկը չմե-
7 ռաւ ։ Եւ Փարաւոն մարդ խրկեց ,

Ն. Ք. ԳՔ. 1491

ու ահա Իսրայելի հօտերէն մէկն ալ
մեռած չէր . և Ղ Փարաւոնին սիրտը
խստացաւ , ու ժողովուրդը չար-
ձակեց ։
Ղ Գլ. Է. 14 ։ Ը. 32 ։
8 Եւ Տէրը ըսաւ Մովսէսին ու Ա-
հարոնին . Առէք ձեզի ձեռքերնիդ
լեցուն քուրայի մուխիր , և Մովսէս դէպ
'ի երկինքը ցանէ զան Փարաւոնին
9 առջևը ։ Ու Եգիպտոսի բոլոր երկ-
րին մէջ փոշի պիտի ըլլայ , ու Ե-
գիպտոսի բոլոր երկրին մէջ մարդոց
ու անասուններուն վրայ Ի խաղա-
Ի Յայտ. Ժզ. 2 ։
ւարտներ հանող ուռեցքներ պիտի
10 ըլլայ ։ Եւ քուրայի մուխիրը առին , ու
Փարաւոնին առջևը կայնեցան . և
Մովսէս դէպ 'ի երկինքը ցանեց զան ,
ու մարդոց և անասուններուն վրայ
Լխաղաւարտներ հանող ուռեցքներ
Լ Բ Օր. Իը. 27 ։
11 եղաւ ։ Եւ Ի մոգերը ուռեցքներուն
Ի Գլ. Ը. 18, 19 ։ Բ Տիմ. Գ. 9 ։
պատճառովը չկրցան կայնիլ Մով-
սէսին առջևը . ինչու որ ուռեցք-
ները մոգերուն վրայ ալ՝ ու բոլոր
12 Եգիպտացւոց վրայ ալ եղաւ ։ Եւ
Տէրը կարծրացուց Փարաւոնին
սիրտը . ու անոնց մտիկ չըրաւ ,
Ծ ինչպէս որ Տէրը Մովսէսին ըսեր
Ծ Գլ. Դ. 21 ։
էր ։
13 Եւ Տէրը ըսաւ Մովսէսին . Կ Առ-
Կ Գլ. Ը. 20 ։
տուանց կանուխ ելիր , ու Փարա-
ւոնին առջևը կայնէ , ու անոր ըսէ .
Եբրայեցւոց Տէր Աստուածը ասանկ
կ'ըսէ . Արձակէ իմ ժողովուրդս որ
14 ինծի պաշտեն . Քանզի աս անգամ
իմ բոլոր հարուածներս պիտի
խրկեմ քու * վրադ՝ և քու ծառա-
*Եբր. սըր-տիդ վրայ՝
ներուդ՝ ու քու ժողովուրդիդ վրայ .
Հ որ գիտնաս թէ բոլոր երկրի մէջ
Հ Գլ. Ը. 10 ։
15 ինծի պէս մէկը չկայ ։ Քանզի հիմա
Ձ իմ ձեռքս պիտի երկընցընեմ՝ որ
Ձ Գլ. Գ. 20 ։
քեզ ու քու ժողովուրդդ ժանտա-
ախտով զարնեմ , ու երկրէն պիտի
16 կորսուիս ։ Եւ Ղ ասոր համար քեզ
Ղ Հռով. Թ. 17 ։ Տես Գլ. Ժդ. 17 ։ Առակ. Ժզ. 4 ։ Ա Պետ. Բ. 9 ։
վերցուցի՝ որ իմ զօրութիւնս քեզ-
մով ցուցընեմ , ու բոլոր երկրի մէջ
17 իմ անունս պատմուի ։ Դուն տա-
կաւին իմ ժողովուրդիս դէմ կե-
նալով՝ պիտի չարձակե՞ս զանոնք ։
18 Ահա ես վաղը աս ատեն խիստ սաս-
տիկ կարկուտ պիտի տեղամ , որ ա-
նոր պէս Եգիպտոսի մէջ եղած չէ՝
անոր հաստատուած օրէն մինչև
19 հիմա ։ Եւ հիմա մարդ խրկէ , ու
ժողվէ՝ քու հօտերդ՝ ու ինչ որ ու-
նիս դաշտին մէջ . [illegible] ամէն մարդ
ու անասուն որ դաշտին մէջ գըտ-
նուի՝ ու տուները ժողվուած չըլ-
լայ , անոնց վրայ կարկուտ պիտի
20 իջնէ , ու պիտի մեռնին ։ Փա-
րաւոնին ծառաներէն ով որ Տէրոջը
խօսքէն կը վախնար՝ իր ծառաները
ու հօտերը տուներու մէջ ժողվեց .
21 Եւ ով որ Տէրոջը խօսքին ուշադ-
րութիւն չըրաւ , իր ծառաները ու

Ն · ք · ղՔ · 1491

իր հօտերը դաշտին մէջ թողուց ։
22 Եւ Տէրը ըսաւ Մովսէսին · Քու
ձեռքդ դէպ 'ի երկինքը երկնցուր ,
ու Եգիպտոսի բոլոր երկրին մէջ
մարդոց ու անասուններուն վրայ՝
և Եգիպտոսի երկրին մէջ եղած
արտերուն բոլոր խոտին վրայ ՝կար-
23 կուտ պիտի գայ ։ Եւ Մովսէս իր
գաւազանը դէպ 'ի երկինքը երկն-
ցուց · ու ʿՏէրը որոտում և կար-
կուտ խրկեց , ու երկրին վրայ կրակ
կը վազէր · ու Տէրը Եգիպտոսի
24 երկրին վրայ կարկուտ տեղաց ։ Եւ
կարկուտ՝ ու կարկուտին մէջտեղը
խառնուած կրակ եկաւ · անանկ
սաստիկ էր որ Եգիպտոսի բոլոր
երկրին մէջ՝ ազգ ըլլալէն հետէ ա-
25 նոր պէս եղած չէր ։ Եւ կարկու-
տը Եգիպտոսի բոլոր երկրին մէջ՝
դաշտը եղածին ամէնը՝ մարդէն
մինչև անասուն զարկաւ · և կար-
կուտը ʾդաշտին բոլոր խոտը զար-
կաւ , ու դաշտին բոլոր ծառերը
26 կոտրեց ։ ՟Միայն Գեսեմի երկրին
մէջ՝ ուր որ Իսրայէլի որդիքը կը
բնակէին , կարկուտ չեղաւ ։
27 Եւ Փարաւոն մարդ խրկեց , ու
կանչեց Մովսէսը ու Ահարոնը՝ և ը-
սաւ անոնց · ʿԱս անգամ մեղանչե-
ցի · ʿԵհովան արդար է , և ես ու
իմ ժողովուրդս յանցաւոր ենք ։
28 ʾԱղաչեցէք Տէրոջը՝ որ Աստուծոյ
*որոտումները ու կարկուտը †դա-
դարին · ու ձեզ պիտի արձակեմ , և
29 ալ պիտի չկենաք ։ Եւ Մովսէս
ըսաւ անոր · Քաղաքէն դուրս ելա-
ծիս պէս՝ ʿիմ ձեռքերս Տէրոջը
պիտի երկնցընեմ , ՟որոտումնե-
րը պիտի դադարին , և ալ կարկուտ
պիտի չըլլայ · որ գիտնաս թէ ՟եր-
30 կիրը Տէրոջն է ։ Բայց ՟ես գիտեմ
որ դուն ու քու ծառաներդ տա-
կաւին Տէր Աստուծմէն չէք վախ-
նար ։
31 Եւ քթանը ու գարին զարնուե-
ցան · ՟ինչու որ գարին հասած էր ,
32 ու քթանը սերմի գացած ։ Բայց
ցորենը ու հաճարը չզարնուեցան ·
ինչու որ ուշ կը բուսնին ։
33 Եւ Մովսէս Փարաւոնին քովէն
քաղաքէն դուրս ելաւ , ու ՟իր
ձեռքերը Տէրոջը երկնցուց · և
որոտումները ու կարկուտը դադա-
րեցաւ , ու երկրին վրայ անձրև
34 չկաթեցաւ ։ Եւ Փարաւոն երբոր
անձրևին ու կարկուտին և որո-
տումին դադարիլը տեսաւ , նորէն
մեղանչեց , ու սիրտը խստացուց՝
35 ինքը ու իր ծառաները ։ Այսպէս
՟Փարաւոնին սիրտը կարծրացաւ ,
ու Իսրայէլի որդիքը չարձակեց ,
ինչպէս որ Տէրը Մովսէսին ձեռ-
քովը ըսեր էր ։

ʾ Յայտ · ժզ · 21 ։
ʿ Յես · ժ · 11 ։ Սաղ · ժը · 13 ։ հը · 47 ։ ճե · 32 ։ ճխը · 8 ։ Ես · Լ · 30 ։ Եզեկ · լը · 22 ։ Յայտ · ը · 7 ։
ʾ Սաղ · ճե · 33 ։
՟ Գլ · ը · 22 ։ թ · 4 , 6 ։ ժ · 23 ։ ժա · 7 ։ ժբ · 13 ։ Ես · լը · 18 , 19 ։
ʿ Գլ · ժ · 16 ։
ʿ բ Մն · ժբ · 6 ։ Սաղ · ճիթ · 4 ։ ճխե · 17 ։ Ողբ · ա · 18 ։ Դան · թ · 14 ։
ʾ Գլ · ը · 8 , 28 ։ ժ · 17 ։ Գոր · ը · 24 ։
* Եբր · ձայ-ները · Սաղ · իթ · 3 , 4 ։
† Եբր · հե-րիք է ·
ʿ գ Թագ · ը · 22 , 38 ։ Սաղ · ճխգ · 6 ։ Ես · ա · 15 ։
՟ Սաղ · իդ · 1 ։ ա Կոր · ժ · 26 , 28 ։
՟ Ես · իզ · 10 ։
՟ Հռութ · ա · 22 ։ բ · 23 ։
՟ Հմր 29 ։ Գլ · ը · 12 ։
՟ Գլ · դ · 21 ։

ԳԼ · Ժ

1 Աստուած կը սպառնայ մարախներ խրկել ։ 7 Փարաւոն իր ծառաներուն աղաչանքէն քիչ մը կը համոզուի Իսրայէլացիները արձակելու ։ 12 Մարախները կու գան , 16 որոնց համար Փարաւոն կ'աղաչէ Մովսէսին ։ 21 Խաւարին հարուածը ։ 24 Փարաւոն նորէն կ'աղաչէ Մովսէսին , 27 բայց տակաւին անոր սիրտը կը կարծրանայ ։

1 Եւ Տէրը ըսաւ Մովսէսին · Մտիր
Փարաւոնին · ՟ինչու որ ես ա-
նոր սիրտը՝ ու անոր ծառաներուն
սիրտը խստացուցի , ՟որ ասս իմ
նշաններս ցուցընեմ անոնց մէջը ·
2 Եւ որ ՟պատմես քու որդիիդ՝ ու
քու որդւոյդ որդիին ականջներուն՝
ինչ որ ըրի Եգիպտացւոց մէջ , և
իմ նշաններս որ անոնց մէջ ցու-
ցուցի , որ գիտնաք թէ ես եմ
Տէրը ։
3 Եւ Մովսէս ու Ահարոն մտան
Փարաւոնին , ու ըսին անոր · Եբ-
րայեցւոց Եհովայ Աստուածը այս-
պէս կ'ըսէ · Մինչև ե՞րբ պիտի չու-
զես ՟խոնարհիլ իմ առջիս · ար-
ձակէ իմ ժողովուրդս որ ինձ պաշ-
4 տեն ։ Վասն զի թէ որ իմ ժողո-
վուրդս արձակել չուզես , ահա վա-
ղը քու սահմաններուդ վրայ ՟մա-
5 րախներ պիտի խրկեմ · Ու երկրին
երեսը պիտի ծածկեն , և մէկը պի-
տի չկրնայ տեսնել երկիրը · ու
կարկուտէն ազատուած ձեզի մնա-
ցածը՝ ՟պիտի ուտեն , և արտին մէջ
բուսած ձեր բոլոր ծառերը պիտի
6 ուտեն ։ Եւ ՟քու տուներդ՝ ու
քու բոլոր ծառաներուդ տուները՝
և ամէն Եգիպտացւոց տուները
պիտի լեցուին · որ ո՛չ քու հայ-
րերդ՝ ո՛չ ալ քու հայրերուդ հայ-
րերը տեսած են՝ իրենց երկրի վրայ
եղած օրէն մինչև այսօր ։ Եւ դար-
ձաւ ու Փարաւոնին քովէն դուրս
ելաւ ։
7 Եւ Փարաւոնին ծառաները ըսին
անոր · Մինչև ե՞րբ ասս մարդը մե-
զի որոգայթ պիտի ըլլայ · արձակէ
մարդիկը որ իրենց Եհովայ Աս-
տուածը պաշտեն · տակաւին չե՞ս
գիտեր որ Եգիպտոսը աւրուեցաւ ։
8 Եւ Մովսէսը ու Ահարոնը Փարաւո-
նին դարձուցին · և անիկայ ըսաւ
անոնց · Գացէք պաշտեցէք ձեր
Եհովայ Աստուածը · բայց ‡որո՞նք
9 են գացողները ։ Եւ Մովսէս ըսաւ ·
Մեր մանկունքներովը ու մեր ծե-
րերովը պիտի երթանք , մեր տը-
ղաքներովը ու մեր աղջիկներովը ,
մեր հօտերովը ու մեր արջառներովը
պիտի երթանք · քանզի ՟տօն պի-
10 տի պահենք Տէրոջը ։ Եւ ըսաւ ա-
նոնց · Տէրը անանկ ձեր հետը ըլլայ ,
ինչպէս որ ես ձեզ ու ձեր տղաք-
ները կ'արձակեմ · զգուշացէք ,

Ն · ք · ղՔ · 1491

՟ Գլ · դ · 21 ։ է · 14 ։
՟ Գլ · է · 4 ։
՟ բ Օր · դ · 9 ։ Սաղ · խդ · 1 ։ հա · 18 ։ հը · 5 , ՟ ։ Յովէլ · ա · 3 ։
՟ գ Թագ · իա · 29 ։ բ Մն · է · 14 ։ լդ · 27 ։ Յոբ · խբ · 6 ։ Երեմ · ժգ · 18 ։ Յակ · դ · 10 ։ ա Պետ · ե · 6 ։
՟ Առակ · Լ · 27 ։ Յայտ · թ · 3 ։
՟ Գլ · թ · 32 ։ Յովէլ · ա · 4 ։ բ · 25 ։
՟ Գլ · ը · 3 , 21 ։
՟ Գլ · իդ · 33 ։ Յես · իգ · 13 ։ ա Թագ · ժը · 21 ։ Ժող · է · 26 ։ ա Կոր · է · 35 ։
‡ Եբր · ո՞վ և ո՞վ
՟ Գլ · ե · 1 ։

Ն․ Ք․ Ղ․ Ք․ 1491

քանզի չարիք կան ձեր առջեւ ։
11 Ոչ այդպէս . հիմա դուք էրիկ
մարդիկներդ գացէք՝ ու Տէրը պաշ-
տեցէք . ինչու որ դուք ատիկայ
կ'ուզէիք ։ Եւ Փարաւոնին առջեւէն
վռնտուեցան ։
ժ Գլ․ է․ 19 ։
12 Եւ Տէրը ըսաւ Մովսէսին . [ժ]Եր-
կընցուր քու ձեռքդ Եգիպտոսի
երկրին վրայ մարախներուն համար ,
որ Եգիպտոսի երկրին վրայ ելլեն ,
ի Հմր 4, 5 ։
և [ի]երկրին բոլոր խոտը՝ կարկուտէն
13 բոլոր մնացածը ուտեն ։ Եւ Մովսէս
երկընցուց իր գաւազանը Եգիպ-
տոսի երկրին վրայ . ու Տէրը բոլոր
ան օրը ու բոլոր գիշերը երկրին
վրայ արեւելեան հով փչել տուաւ .
և երբ առտու եղաւ՝ արեւելեան
լ Սաղ․ հը․ 46 ; ճե․ 34 ։
14 հովը մարախները բերաւ ։ Եւ [լ]մա-
րախները Եգիպտոսի բոլոր երկրին
վրայ ելան , ու Եգիպտոսի բոլոր
սահմաններուն վրայ իջան . խիստ
խ Յովել․ բ․ 2 ։
սաստիկ էին . [խ]անոնցմէ առաջ ա-
նանկ մարախ չեղաւ , անոնցմէ ետքն
ծ Հմր 5 ։
15 ալ անանկ պիտի չըլլայ ։ Եւ [ծ]բո-
լոր երկրին երեսը ծածկեցին , ու եր-
կիրը մթընցաւ , ու [կ]երկրին բոլոր
կ Սաղ․ ճե․ 35 ։
խոտը՝ և կարկուտէն մնացած ծա-
ռերուն ամէն պտուղները կերան .
ու Եգիպտոսի բոլոր երկրին մէջ
եղած ծառերուն վրայ և արտին
խոտերուն վրայ բնաւ կանանչեղէն
չմնաց ։
16 Ուստի Փարաւոն շուտով կանչեց
Մովսէսը ու Ահարոնը , և ըսաւ .
հ Գլ․ թ․ 27 ։
[հ]Ձեր Տէր Աստուծոյն՝ ու ձեզի
17 դէմ մեղանչեցի . Եւ հիմա շնորհք
ըրէք՝ միայն աս անգամ ներեցէք
ձ Գլ․ թ․ 28 ; գ Թագ․ ժգ․ 6 ։
իմ յանցանքս , ու [ձ]ձեր Տէր Աս-
տուածոյն աղաչեցէք՝ որ իմ վրայէս
18 միայն աս մահը վերցընէ ։ Եւ անի-
ղ Գլ․ ը․ 30 ։
կայ [ղ]Փարաւոնին քովէն դուրս
19 ելաւ , ու Տէրոջը աղաչեց ։ Եւ
Տէրը խիստ սաստիկ արեւմտեան
հով մը խրկեց , որ մարախները վեր-
ճ Յովել․ բ․ 20 ։
ցուց , ու [ճ]Կարմիր ծովը քշեց զա-
նոնք . Եգիպտոսի բոլոր սահման-
ներուն մէջ մէկ մարախ մը չմնաց ։
մ Գլ․ դ․ 21 ; ժա․ 10 ։
20 Բայց Տէրը [մ]կարծրացուց Փարաւո-
նին սիրտը , ու անիկայ Իսրայէլի
որդիքը չարձակեց ։
21 Եւ Տէրը ըսաւ Մովսէսին .
յ Գլ․ թ․ 22 ։
[յ]Ձեռքդ դէպ 'ի երկինքը երկըն-
ցուր , որ Եգիպտոսի երկրին վրայ
խաւար ըլլայ , շօշափելի խաւար մը
22 ըլլայ ։ Եւ Մովսէս իր ձեռքը դէպ
'ի երկինքը երկընցուց , ու Եգիպ-
ն Սաղ․ ճե․ 28 ։
տոսի բոլոր երկրին մէջ [ն]թանձր
23 խաւար եղաւ իրեք օր . Մէկզմէկ
չէին տեսներ , և իրեք օր մէկը իր
շ Գլ․ ը․ 22 ։
տեղէն չելաւ . [շ]բայց Իսրայէլի բո-
լոր որդիքը իրենց բնակութեանցը
մէջ լոյս ունէին ։
24 Եւ Փարաւոն կանչեց Մովսէսը ու

Ն․ Ք․ Ղ․ Ք․ 1491

[ո]ըսաւ . Գացէք՝ պաշտեցէք Եհո-
ո Հմր 8 ։
վան . միայն ձեր հօտերը ու ձեր ար-
ջառները մնան . [չ]ձեր ընտանիքներն
չ Հմր 10 ։
25 ալ ձեզի հետ թող երթան ։ Եւ
Մովսէս ըսաւ . Պէտք է որ դուն մեր
ձեռքը զոհեր ու ողջակէզներ ալ
տաս , որ մեր Տէր Աստուծոյն մա-
26 տուցանենք ։ Եւ [պ]մեր հօտերն ալ
մեր հետը պիտի երթան՝ անոնցմէ
մէկ կճղակ մը չմնալով . ինչու որ
մեր Տէր Աստուածը պաշտելու հա-
մար անոնցմէ պարտինք առնել . ու
մենք մինչև որ հոն չերթանք , չենք
գիտեր թէ ինչով պիտի պաշտենք
27 Տէրը ։ Եւ Տէրը [ջ]կարծրացուց
ջ Հմր 20 ; Գլ․ դ․ 21 ; ժդ․ 4, 8 ։
Փարաւոնին սիրտը , որ չուզեց ար-
28 ձակել զանոնք ։ Եւ Փարաւոն ը-
սաւ անոր . Քովէս գնա . զգուշու-
թիւն ըրէ քու անձիդ , մէյմըն ալ
իմ երեսս չտեսնես . քանզի ան օրը
որ իմ երեսս տեսնես , պիտի մեռ-
29 նիս ։ Եւ Մովսէս ըսաւ . Աղէկ
ըսիր . [ռ]մէյմըն ալ քու երեսդ պի-
ռ Եբր․ ժա․ 27 ։
տի չտեսնեմ ։

## ԳԼ․ ԺԱ

1 Աստուած կը պատուիրէ Իսրայէլացւոց՝ որ ի-
րենց դրացիներէն ծանրագին բաներ ուզեն ։
4 Մովսէս կը սպառնայ Փարաւոնին՝ անդրան-
կաց մահը ։

1 Եւ Տէրը ըսաւ Մովսէսին . Փարա-
ւոնին վրայ՝ ու Եգիպտոսի վրայ
հարուած մըն ալ պիտի բերեմ ;
անկէ ետև ձեզ ասկէ պիտի արձա-
կէ . և [ս]երբոր ձեզ արձակէ , ձեզ
ս Գլ․ ժբ․ 31, 33, 39 ։
ասկէ բոլորովին դուրս պիտի ընէ ։
2 Հիմա խօսէ ժողովուրդին ականջ-
ներուն , ու ամէն մարդ իր դրացի-
էն՝ և ամէն կնիկ իր դրացիէն [տ]ար-
տ Գլ․ գ․ 22 ; ժբ․ 35 ։
ծաթեղէն զարդեր ու ոսկեղէն զար-
3 դեր խնդրեն ։ [ու]Եւ Տէրը շնորհք
ու Գլ․ գ․ 21 ; ժբ․ 36 ; Սաղ․ ճզ․ 46 ։
տուաւ ժողովուրդին Եգիպտացւոց
առջեւ . [փ]Մովսէս ալ Եգիպտոսի
երկրին մէջ Փարաւոնին ծառանե-
փ Բ Թագ․ է․ 9 ; Եսթ․ թ․ 4 ։
րուն առջեւ՝ ու ժողովուրդին առ-
ջեւ խիստ մեծ մարդ մըն էր ։
4 Եւ Մովսէս ըսաւ . Տէրը այսպէս
կ'ըսէ . [ք]Ես կէս գիշերին Եգիպտոսի
ք Գլ․ ժբ․ 12, 23, 29 ; Ամով․ ե․ 17 ։
5 մէջտեղը պիտի ելլեմ . Ու Եգիպ-
տոսի երկրին մէջ [լ]ամէն առջինեկը
պիտի մեռնի , իր աթոռին վրայ
լ Գլ․ ժբ․ 12, 29 ; Ամով․ դ․ 10 ։
նստող Փարաւոնին առջինեկէն
մինչև աղացքին ետեւը եղող աղա-
խինին առջինեկը՝ և բոլոր անա-
6 սուններուն առջինեկը ։ Ու Եգիպ-
տոսի բոլոր երկրին մէջ [խ]մեծ աղա-
խ Գլ․ ժբ․ 30 ; Ամով․ ե․ 17 ։
ղակ պիտի ըլլայ , անանկ որ անոր
պէս ոչ եղած է , ոչ ալ նորէն պի-
7 տի ըլլայ ։ [ը]Եւ Իսրայէլի որդւոցը
ը Գլ․ ը․ 22 ։
դէմ [բ]մարդէն մինչև անասուն՝
բ Յես․ ժ․ 21 ։
շուն մըն ալ պիտի չշարժէ իր լե-
զուն . որ գիտնաք թէ Տէրը Եգիպ-
տացւոց ու Իսրայէլի մէջտեղը տար-
ծ Գլ․ ժբ․ 33 ։
8 բերութիւն կ'ընէ ։ Եւ [ծ]աս բոլոր

Ն. Ք. ԴՔ. 1491

քու ծառաներդ ինծի պիտի իջնեն ,
ու ինծի խոնարհութիւն ընեն՝ ը-
սելով . Դուն՝ ու բոլոր [է]քեզի հե-
տեւող ժողովուրդդ ելէք . ու ան-
կէ ետքը պիտի ելլեմ ։ Եւ Մովսէս
սաստիկ բարկութեամբ Փարաւո-
նին քովէն դուրս ելաւ ։
9 Եւ Տէրը ըսաւ Մովսէսին . [ը]Փա-
րաւոն ձեզի մտիկ պիտի չընէ , որ
[ի]իմ հրաշքներս շատցընեմ Եգիպ-
10 տոսի երկրին մէջ ։ Եւ Մովսէս ու
Ահարոն աս ամէն հրաշքները Փա-
րաւոնին առջեւը ըրին . [թ]Եւ Տէրը
կարծրացուց Փարաւոնին սիրտը ,
ու Իսրայէլի որդիքը իր երկրէն չար-
ձակեց ։

## ԳԼ. ԺԲ

1 Տարւոյն սկիզբը կը փոխուի ։ 3 Զատկին սահմանուիլը , 11 ու անոր կանոնները ։ 15 Անխմոր հաց ուտելու հրամանը ։ 29 Անդրանկաց մահը ։ 31 Եգիպտացիք արտորնօք երկրէն դուրս կը հանեն Իսրայէլացիները , 37 որոնք Սոկքովթ կը հասնին ։ 43 Զատկին վրայով պատուէրներ ։

1 Եւ Տէրը խօսեցաւ Մովսէսին ու
Ահարոնին Եգիպտոսի երկրին
2 մէջ՝ ըսելով . [ժ]Աս ամիսը ձեզի
ամիսներուն սկիզբը ըլլայ . ձեզի
տարւոյն ամիսներուն առաջինը ըլ-
3 լայ ։ Իսրայէլի բոլոր ժողովքին
զրուցեցէք՝ ըսելով . Աս ամսուն
տասնին՝ ամէն մէկը իրեն գառնուկ
մը առնէ՝ իրենց հայրերուն տանը
համեմատ , տունին՝ տան գլուխ
4 մէյմէկ գառնուկ ։ Եւ թէ որ մէկ
տունը մէկ գառնուկին քիչ կու-
գայ , ան մօտիկը իր տանը քովը ե-
ղած դրացիին հետ՝ հոգիներուն
համրանքին համեմատ առնէ . գառ-
նուկին վրայով՝ ամէն մէկուն իր
5 կերածին չափ հաշիւ ընէք ։ Ձեր
գառնուկը [ի]անարատ՝ արու՝ [լ]մէկ
տարեկան ըլլայ . ոչխարներէն կամ
6 այծերէն առնէք զան ։ Եւ մինչեւ աս
ամսուն [խ]չորեքտասաներորդ օրը
պահէք զան . ու Իսրայէլի ժողովքին
բոլոր բազմութիւնը մորթեն անի-
7 կայ՝ *իրիկուան դէմ ” ։ Եւ արիւ-
նէն առնեն՝ ու տուներուն երկու
կողմի դրանդեւացը ու վերի սեմին
վրայ քսեն , ուր որ զանիկայ պիտի
8 ուտեն ։ Եւ միսը ան գիշերը ու-
տեն . զանիկայ կրակի վրայ խորո-
ված՝ [ծ]բաղարջով ու լեղի խոտերով
9 պիտի ուտեն . Անկէ՝ հում կամ
ջուրի մէջ եփած չուտէք , բայց
[կ]կրակի վրայ խորոված , անոր գլու-
խը ոտքերովը ու փորոտիքովը մէկ-
10 տեղ ուտէք ։ [հ]Եւ անկէ բան մը
չթողուք մինչեւ առտու . ու անկէ
ինչ որ առտուան կը մնայ , կրա-
11 կով այրէք ։ Եւ այսպէս պիտի ու-
տէք զան . ձեր գօտիները մէջքեր-
նիդ՝ ու ձեր կօշիկները ոտքերնիդ՝

է Դատ. զ. 10 ։ ը. 5 ։ գ Թագ. ի. 10 ։ դ Թագ. գ. 9 ։
ը Գլ. գ. 19 ։ է. 4 ։ ժ. 1 ։
ի Գլ. է. 3 ։
թ Գլ. ժ. 20, 27 ։ Հռով. բ. 5 ։ թ. 22 ։
ժ Գլ. ժգ. 4 ։ բ Օր. ժզ. 1 ։
ի Ղև. իբ. 19, 20, 21 ։ Մաղ. ա. 8, 14 ։ Եբր. թ. 14 ։ ա Պետ. ա. 19 ։
լ Ղև. իգ. 12 ։
խ Ղև. իգ. 5 ։ Թու. թ. 3 ։ իը. 16 ։ բ Օր. ժզ. 1, 6 ։
* Եբր. երկու իրիկուններուն մէջտեղը ։ Գլ. ժզ. 12 ։
ծ Գլ. լդ. 25 ։ բ Օր. ժզ. 3 ։ Թու. թ. 11 ։ ա Կոր. ե. 8 ։
կ բ Օր. ժզ. 7 ։
հ Գլ. իգ. 18 ։ լդ. 25 ։

և ձեր ցուպերը ձեռքերնիդ ըլլա-
լով . զանիկայ արտորնօք ուտէք .
12 [ձ]Տէրոջը զատիկն է ան ։ Եւ [ղ]ան
գիշերը Եգիպտոսի երկրէն պիտի
անցնիմ , ու Եգիպտոսի երկրին
մէջ ամէն առջինեկը՝ մարդէն մինչեւ
անասուն պիտի զարնեմ . և
[ճ]Եգիպտոսի բոլոր †աստուածնե-
րուն վրայ դատաստան պիտի կա-
13 տարեմ . [մ]Ես եմ Տէրը ։ Եւ ա-
րիւնը ձեր եղած տուներուն վրայ
նշանի համար ըլլայ , ու երբոր
արիւնը տեսնեմ՝ ձեր վրայէն պիտի
անցնիմ . և հարուածը ձեր վրայ
պիտի չգայ ձեզ կորսնցընելու , երբ
որ Եգիպտոսի երկիրը զարնեմ ։
14 Եւ ան օրը ձեզի [ն]յիշատակի համար
ըլլայ , և զանիկայ [շ]Տէրոջը տօն
պահէք . ձեր ‡սերունդին մէջ
[ո]յաւիտենական կանոնով մը տօն
15 պահէք զան ։ [չ]Եօթը օր բաղարջ
ուտէք . նոյն իսկ առաջին օրը ձեր
տուներէն դուրս ձգէք խմորը .
ինչու որ առջի օրէն մինչեւ եօթնե-
րորդ օրը ով որ խմորեալ հաց
ուտէ , [պ]ան անձը Իսրայէլէն պիտի
16 կորսուի ։ Եւ առաջին օրը [ջ]սուրբ
ժողով մը ըլլայ , եօթներորդ օրն
ալ ձեզի սուրբ ժողով մը ըլլայ .
ան օրերը բնաւ գործ մը չգործուի ,
բայց ամէն մէկուն ուտելիքը , ան
17 միայն պատրաստէք ։ Եւ բաղարջ-
ներուն տօնը պահէք . քանզի [ռ]ան
նոյն օրուանը մէջ ձեր զօրքերը
Եգիպտոսի երկրէն հանեցի . ուստի
ձեր սերունդին մէջ յաւիտենական
18 կանոնով մը ան օրը պահէք ։ [ս]Ա-
ռաջին ամսուն չորեքտասաներորդ
օրուան իրիկունէն՝ մինչեւ ամսուն
քսանումէկերորդ օրուան իրիկունը՝
19 բաղարջ պիտի ուտէք ։ [վ]Եօթը օր
տուներնիդ խմոր չգտնուի . քանզի
ով որ խմորեալ հաց ուտէ , [տ]ան
անձը Իսրայէլի ժողովքէն պիտի
կորսուի , թէ օտարական ըլլայ և
20 թէ երկրին բնակը ։ Խմորեալ բան
մը պիտի չուտէք . ձեր բոլոր բնա-
կութեանցը մէջ բաղարջ ուտէք ։
21 Եւ Մովսէս կանչեց Իսրայէլի բո-
լոր ծերերը , ու ըսաւ անոնց . [ր]Ձեր
ընտանեացը համեմատ ընտրեցէք ,
ու առէք ձեզի մէյմէկ գառն , ու
22 զատկին համար մորթեցէք ։ [ց]Եւ
զոպայի փունջ մը առէք , ու կոն-
քին մէջ եղած արիւնին թաթխե-
ցէք , և [ւ]դրանը վրայի սեմին՝ ու
երկու քովի դրանդեւացը վրայ՝ կոն-
քին մէջ եղած արիւնէն քսեցէք , և
մինչեւ առտու ձեզմէ մէկը իր տանը
23 դռնէն դուրս չելլէ . [փ]Քանզի Տէրը
Եգիպտացիները զարնելու պիտի
անցնի , և երբ դրանը վրայի սեմին՝
ու երկու կողմի դրանդեւացը վրայ

Ն. Ք. ԴՔ. 1491

ձ բ Օր. ժզ. 5 ։
ղ Գլ. ժա. 4, 5 ։ Ամով. ե. 17 ։
ճ Թու. լգ. 4 ։
† Կամ՝ իշխաններուն ։ Գլ. իա. 6 ։ իբ. 28 ։ Սաղ. ձբ. 1, 6 ։ Յովհ. ժ. 34, 35 ։
մ Գլ. զ. 2 ։
ն Գլ. ժգ. 9 ։
շ Ղև. իգ. 4, 5 ։ դ Թագ. իգ. 21 ։
‡ Եբր. ազգերուն
ո Հմր 24, 43 ։ Գլ. ժգ. 10 ։
չ Գլ. ժգ. 6, 7 ։ իգ. 15 ։ լդ. 18, 25 ։ Ղև. իգ. 5, 6 ։ Թու. իը. 17 ։ բ Օր. ժզ. 3, 8 ։ ա Կոր. ե. 7 ։
պ Ծն. ժէ. 14 ։ Թու. թ. 13 ։
ջ Ղև. իգ. 7, 8 ։ Թու. իը. 18, 25 ։
ռ Գլ. ժգ. 3 ։
ս Ղև. իգ. 5 ։ Թու. իը. 16 ։
վ Ել. իգ. 15 ։ լդ. 18 ։ բ Օր. ժզ. 3 ։ ա Կոր. ե. 7, 8 ։
տ Թու. թ. 13 ։
ր Հմր 3 ։ Թու. թ. 4 ։ Յեսու. ե. 10 ։ դ Թագ. իգ. 21 ։ Եզր. զ. 20 ։ Մատ. իզ. 18, 19 ։ Մար. ժդ. 12-16 ։ Ղուկ. իբ. 7, 8 ։
ց Եբր. ժա. 28 ։
ւ Հմր 7 ։
փ Հմր 12, 13 ։

Ն․ Ք․ ԴՔ․ 1491

արիւնը տեսնէ, Տէրը այն դրանը
վրայէն պիտի անցնի, և [ա]պիտի
չթողու Հարուածիչը՝ որ ձեր տու-
ները մտնէ ձեզ զարնելու համար ։
24 Եւ աս բանը քեզի ու քու որդւոցդ
կանոն ըլլալու համար պահէք յա-
25 ւիտեան ։ Եւ ըլլայ թէ երբոր այն
երկիրը գաք՝ որն որ Տէրը ձեզի պի-
տի տայ [բ]իր ըսածին պէս, աս
26 պաշտօնը պահէք ։ [գ]Եւ ըլլայ թէ
երբոր ձեր որդիքը ձեզի ըսեն թէ՝
Աս պաշտօնով ի՞նչ ըսել կ'ուզէք.
27 Ըսէք որ, [դ]Ասիկայ Տէրոջը զատ-
կին զոհն է, որ անիկայ Եգիպտոսի
մէջ Իսրայէլի որդւոցը տուներուն
վրայէն անցաւ՝ երբոր Եգիպտացի-
ները զարկաւ, ու մեր տուները ա-
զատեց ։ Եւ ժողովուրդը [ե]խոնար-
հեցաւ ու երկրպագութիւն ըրաւ ։
28 Եւ Իսրայէլի որդիքը գացին, ու
[զ]Տէրոջը՝ Մովսէսին ու Ահարոնին
պատուիրածին պէս ըրին. անանկ
ըրին ։
29 [է]Եւ եղաւ որ կէս գիշերին [ը]Տէրը
Եգիպտոսի երկրին մէջ ամէն ան-
դրանիկը զարկաւ, իր աթոռը նստող
[թ]Փարաւոնին անդրանիկէն մինչև
բանտի մէջ եղած գերիին անդրանի-
կը՝ և ամէն անասունին անդրանիկը ։
30 Եւ ան գիշերը ելաւ Փարաւոն՝ ու
անոր բոլոր ծառաները՝ և բոլոր
Եգիպտացիք, ու Եգիպտոսի մէջ
[ժ]մեծ աղաղակ մը եղաւ. քանզի
տուն մը չկար՝ որ անոր մէջ մեռեալ
չըլլար ։
31 Եւ [ի]գիշերով կանչեց Մովսէսը ու
Ահարոնը՝ և ըսաւ. Ելէք, ու ելէք
իմ ժողովուրդիս մէջէն՝ [լ]դուք ալ
և Իսրայէլի որդիքն ալ, ու գացէք
պաշտեցէք Եհովան՝ ինչպէս որ ը-
32 սիք. [խ]Նաև ձեր հօտերը ու ձեր
արջառները առէք՝ ինչպէս որ ը-
սիք, ու գացէք. և [ծ]զիս ալ օրհնե-
33 ցէք ։ [կ]Եւ Եգիպտացիք բռնադա-
տեցին ժողովուրդը՝ որ շուտով ան
երկրէն դուրս խրկեն զանոնք.
քանզի ըսին. [հ]Ամէնքս ալ կը
34 մեռնինք ։ Եւ ժողովուրդը իրենց
զանգուածը դեռ չխմորած՝ իրենց
[ձ]խմորի տաշտերը իրենց լաթերովը
փաթթած ուսերնուն վրայ վեր-
35 ցուցին ։ Եւ Իսրայէլի որդիքը
Մովսէսին խօսքին պէս ըրին. ու
Եգիպտացիներէն [ղ]արծաթեղէն
զարդեր և ոսկեղէն զարդեր ու հան-
36 դերձներ խնդրեցին ։ [ճ]Եւ Տէրը
ժողովուրդին շնորհք տուաւ Ե-
գիպտացւոց առջևը, անանկ որ Ե-
գիպտացիք անոնց խնդրածը տուին.
ու [մ]անոնք կողոպտեցին Եգիպտա-
ցիները ։
37 Եւ [յ]Իսրայէլի որդիքը [ն]Ռամես-
սէն դէպ 'ի Սոկքոթ չուեցին. ըն-

[ա] Եզեկ․ թ․ 6 ։ Յայտ․ է․ 3 ։ թ․ 4 ։ Բ Թագ․ իդ․ 16 ։ ա Կոր․ ժ․ 10 ։ Եբր․ ժա․ 28 ։
[բ] Գլ․ գ․ 8, 17 ։
[գ] Գլ․ ժգ․ 8, 14 ։ Բ Օր․ լբ․ 7 ։ Յես․ դ․ 6 ։ Սաղ․ հը․ 6 ։
[դ] Հմր 11 ։
[ե] Գլ․ դ․ 31 ։
[զ] Եբր․ ժա․ 28 ։
[է] Գլ․ ժա․ 4 ։
[ը] Թու․ ը․ 17 ։ լգ․ 4 ։ Սաղ․ հը․ 51 ։ ճե․ 36 ։ ճլե․ 8 ։ ճլզ․ 10 ։
[թ] Գլ․ դ․ 23 ։ ժա․ 5 ։
[ժ] Գլ․ ժա․ 6 ։ Առակ․ իա․ 13 ։ Ամով․ ե․ 17 ։ Յակ․ բ․ 13 ։
[ի] Գլ․ ժա․ 1 ։ Սաղ․ ճե․ 38 ։
[լ] Գլ․ ժ․ 9 ։
[խ] Գլ․ ժ․ 26 ։
[ծ] Ծն․ իէ․ 34 ։
[կ] Գլ․ ժա․ 8 ։ Սաղ․ ճե․ 38 ։
[հ] Ծն․ ի․ 3 ։
[ձ] Գլ․ ը․ 3 ։
[ղ] Գլ․ գ․ 22 ։ ժա․ 2 ։
[ճ] Գլ․ գ․ 21 ։ ժա․ 3 ։
[մ] Ծն․ ժե․ 14 ։ Գլ․ գ․ 22 ։ Սաղ․ ճե․ 37 ։
[յ] Թու․ լգ․ 3, 5 ։
[ն] Ծն․ խէ․ 11 ։

տանիքներէն զատ՝ [շ]վեց հարիւր
հազարի չափ հետևակ էրիկ մարդիկ
38 էին ։ Եւ [ո]անոնց հետ խառնիճա-
ղանճ բազմութիւն ալ ելաւ. և
ոչխարները ու արջառները խիստ
39 մեծ հօտ մըն էին ։ Եւ Եգիպտոսէն
իրենց հանած զանգուածէն ան-
խմոր շօթեր եփեցին, ինչու որ
խմորեալ չէր. [չ]քանզի Եգիպտո-
սէն վռընտուեցան, ու չէին կրնար
ուշանալ. ու իրենց պաշար ալ
չէին պատրաստեր ։
40 Եւ Եգիպտոսի մէջ Իսրայէլի որ-
դւոցը բնակած ժամանակը [պ]չորս
41 հարիւր երսուն տարի էր ։ Եւ եղաւ
որ չորս հարիւր երսուն տարինե-
րուն վերջը՝ ան նոյն օրը [ջ]Տէրոջը
բոլոր զօրքերը Եգիպտոսի երկրէն
42 ելան ։ Ասիկայ [ռ]Տէրոջը համար
պահելու գիշեր մըն է. ինչու որ
զանոնք Եգիպտոսի երկրէն հանեց.
աս ան գիշերն է Տէրոջը համար Իս-
րայէլի բոլոր որդիներէն իրենց ազ-
գերուն մէջ պահուելու ։
43 Եւ Տէրը ըսաւ Մովսէսին ու Ա-
հարոնին. Աս է [ս]զատկին կանոնը.
բնաւ մէկ օտարական մը անկէ պի-
44 տի չուտէ. Բայց ամէն մարդուն
ստակով ծախու առած ծառան՝
երբոր [վ]զանիկայ թլփատես, ան
45 ատենը թող ուտէ անկէ ։ [տ]Օտա-
րական ու վարձկան ծառան անկէ
46 պիտի չուտէ ։ Մէկ տան մէջ պի-
տի ուտուի ան. տունէն դուրս
չհանես անոր միսէն. [ր]ու անոր մէկ
47 ոսկորը պիտի չկոտրէք ։ [ց]Իսրայէ-
48 լի բոլոր ժողովքը ընէ ան ։ Եւ
[ւ]երբ օտարական մը քու քովդ
պանդխտանալու ըլլայ, ու Տէրոջը
զատիկ ընելու ըլլայ, անոր ամէն
արուն թող թլփատուի, և ան ա-
տենը ան ընելու մօտենայ, ու ինքը
երկրին բնակին պէս ըլլայ. քանզի
անթլփատ մէկը բնաւ անկէ պիտի
49 չուտէ ։ Երկրացիին ու ձեր մէջը
բնակող օտարականին [փ]մէկ օրէնք
50 ըլլայ ։ Եւ Իսրայէլի բոլոր որդի-
քը՝ Տէրոջը Մովսէսին ու Ահարո-
նին պատուիրածին պէս ըրին. ա-
51 նանկ ըրին ։ [ք]Եւ եղաւ որ՝ ան նոյն
օրը Տէրը Եգիպտոսի երկրէն հանեց
Իսրայէլի որդիքը [օ]իրենց զօրքե-
րովը ։

## ԳԼ․ ԺԳ

1 Անդրանիկները Աստուծոյ նուիրելու, 3 և զատկի յիշատակութիւնը պահելու, 11 և անասնոց անդրանիկներն ալ Աստուծոյ նուիրելու վրայով պատուէրներ ։ 17 Իսրայէլացիք Եգիպտոսէն դուրս կ'ելլեն, և Յովսեփին ոսկորները հետերնին կ'առնեն, 20 ու Ոթոմ կու գան ։ 21 Աստուած Իսրայէլացւոց կ'առաջնորդէ ամպի ու կրակի սիւնով ։

1 Եւ Տէրը խօսեցաւ Մովսէսին՝ ը-
2 սելով. [ա]Սրբէ ինծի ամէն անդ-

Ն․ Ք․ ԴՔ․ 1491

[շ] Ծն․ ժբ․ 2 ։ Խզ․ 3 ։ Գլ․ լը․ 26 ։ Թու․ ա․ 46 ։ ժա․ 21 ։
[ո] Թու․ ժա․ 4 ։
[չ] Գլ․ զ․ 1 ։ ժա․ 1 ։ Հմր 33 ։
[պ] Ծն․ ժե․ 13 ։ Գոր․ է․ 6 ։ Գաղ․ գ․ 17 ։
[ջ] Գլ․ է․ 4 ։ Հմր 51 ։
[ռ] Բ Օր․ ժզ․ 6 ։
[ս] Թու․ թ․ 14 ։
[վ] Ծն․ ժէ․ 12, 13 ։
[տ] Ղև․ իբ․ 10 ։
[ր] Թու․ թ․ 12 ։ Յովհ․ ժթ․ 33, 36 ։
[ց] Հմր 6 ։ Թու․ թ․ 13 ։
[ւ] Թու․ թ․ 14 ։
[փ] Թու․ թ․ 14 ։ ժե․ 15, 16 ։ Գաղ․ գ․ 28 ։
[ք] Հմր 41 ։
[օ] Գլ․ զ․ 26 ։

[ա] Հմր 12, 13, 15 ։ Գլ․ իբ․ 29, 30 ։ Լդ․ 19 ։ Ղև․ իէ․ 26 ։ Թու․ գ․ 13 ։ ը․ 16, 17 ։ Ժը․ 15 ։ Բ Օր․ ժե․ 19 ։ Ղու․ բ․ 23 ։

Ն. Ք. ԳՌ. 1491

բ Գլ. ժբ. 42 ։ Բ Օր. ժզ. 3 ։
գ Գլ. գ. 1 ։
դ Գլ. ժբ. 8 ։
ե Գլ. իգ. 15 ։ ԼԴ. 18 ։ Բ Օր. ժզ. 1 ։
զ Գլ. գ. 8 ։
է Գլ. գ. 8 ։
ը Գլ. ժբ. 25, 26 ։
թ Գլ. ժբ. 15, 16 ։
ժ Գլ. ժբ. 19 ։
ի Հմր 14 ։ Գլ. ժբ. 26 ։
լ Տես Հմր 16 ։ Գլ. ժբ. 14 ։ Թուոց. ժե. 39 ։ Բ Օր. զ. 8 ։ ժա. 18 ։ Առակ. ա. 9 ։ Ես. խթ. 16 ։ Երեմ. իբ. 24 ։ Մատ. իգ. 5 ։
խ Գլ. ժբ. 14, 24 ։
ծ Հմր 2 ։ Գլ. իբ. 29 ։ ԼԴ. 19 ։ Ղև. իէ. 26 ։ Թուոց. ը. 17 ։ ժը. 15 ։ Բ Օր. ժե. 19 ։ Եզեկ. խդ. 30 ։
կ Գլ. ԼԴ. 20 ։ Թուոց. ժը. 15 16 ։
հ Թուոց. գ. 46, 47 ։ ժը. 15, 16 ։
ձ Գլ. ժբ. 26 ։ Բ Օր. զ. 20 ։ Յեսու. դ. 6 21 ։
* Եբր. վաղը
ղ Հմր 3 ։
ճ Գլ. ժբ. 29 ։

բանիկը՝ որ արգանդ կը բանայ Իս-
րայէլի որդւոցը մէջ, մարդէն ալ՝
3 անասունէն ալ. ան իմս է ։ Եւ
Մովսէս ըսաւ ժողովուրդին. [բ] Յի-
շեցէ՛ք աս օրը որ Եգիպտոսէն՝ ծա-
ռայութեան տունէն ելաք. ինչու
որ Տէրը ձեզ անկից [գ] զօրաւոր
ձեռքով հանեց. [դ] Եւ խմորեալ հաց
4 պիտի չուտուի ։ [ե] Դուք այսօր ե-
5 լաք, Աբիբ ամսուն մէջ ։ Եւ ըլ-
լայ որ երբ Տէրը [զ] տանելու ըլլայ
քեզ Քանանացւոց ու Քետացւոց
և Ամորհացւոց ու Խևացւոց և Յե-
բուսացւոց երկիրը՝ որն որ քեզի
տալու համար [է] քու հայրերուդ եր-
դում ըրաւ, [ը] ան երկիրը որ կաթ
ու մեղր կը բղխէ, [ը] աս ամսուն
մէջ պիտի կատարես աս պաշտօ-
6 նը ։ [թ] Եօթը օր բաղարջ պիտի ու-
տես, և եօթներորդ օրը տօն ըլլայ
7 Տէրոջը ։ Ան եօթը օրերուն մէջ
բաղարջ պիտի ուտուի. ու քովդ
[ժ] խմորեալ հաց պիտի չտեսնուի.
ո՛չ ալ քու քովդ խմոր պիտի
տեսնուի քու բոլոր սահմաններուդ
8 մէջ ։ Եւ [ի] ան օրը քու որդւոյդ
պիտի պատմես՝ ըսելով. Աս անոր
համար է՝ որ Տէրը ըրաւ ինծի, երբ-
9 որ ես Եգիպտոսէն ելայ ։ Եւ ա-
սիկայ քեզի [լ] նշանի համար պիտի
ըլլայ ձեռքիդ վրայ, ու քու աչքե-
րուդ մէջտեղը յիշատակի համար,
որ Տէրոջը օրէնքը քու բերնիդ մէջ
ըլլայ. ինչու որ Տէրը քեզ զօրա-
ւոր ձեռքով հանեց Եգիպտոսէն ։
10 [խ] Ուստի դուն աս կանոնը տարիէ
տարի իրատենին պիտի պահես ։
11 Եւ ըլլայ որ՝ երբ Տէրը քեզ Քա-
նանացւոց երկիրը տանի՝ ինչպէս որ
քեզի ու քու հայրերուդ երդում
12 ըրաւ, ու զանիկայ քեզի տայ, [ծ] Ան
ամէնը՝ որ արգանդ կը բանայ, Տէ-
րոջը համար պիտի զատես. և քու
ունեցած անասուններուդ ամէն առջի-
նեկ արուները Տէրոջը պիտի ըլլայ ։
13 Եւ [կ] իշուն ամէն առջինեկը ոչխա-
րով մը փրկես. և թէ որ չփրկես՝
անոր վիզը պիտի կտրես. ու քու
որդւոցդ մէջ մարդոց ամէն անդրա-
14 նիկը [հ] պիտի փրկես ։ [ձ] Եւ ըլլայ որ
երբ քու որդիդ *օր մը" քեզի հար-
ցընէ՝ ըսելով. Ի՞նչ է աս. անոր
պիտի ըսես թէ՝ [ղ] Տէրը մեզ Եգիպ-
տոսէն՝ ծառայութեան տունէն զօ-
15 րաւոր ձեռքով հանեց. Եւ եղաւ
որ երբ Փարաւոն խստացաւ՝ մե-
զ արձակել չուզեց, [ճ] Տէրը Ե-
գիպտոսի երկրին մէջ ամէն առջի-
նեկը՝ մարդու առջինեկէն մինչև
անասունի առջինեկը մեռցուց.
անոր համար ես ամէն արգանդ
բացող արուն Տէրոջը զոհ կ'ընեմ,
ու իմ որդւոցս ամէն առջինեկը կը
16 փրկեմ ։ Եւ ասիկայ քու ձեռ-
քիդ վրայ [մ] նշանի համար՝ ու աչ-
քերուդ մէջտեղը ճակատնոցի հա-
մար ըլլայ. ինչու որ Տէրը մեզ Ե-
գիպտոսէն զօրաւոր ձեռքով հա-
նեց ։
17 Եւ եղաւ որ երբ Փարաւոն ժո-
ղովուրդը արձակեց, Աստուած զա-
նոնք Փղշտացւոց երկրին ճամբայէն
չտարաւ, թէև ան †մօտ ճամբան մօտ
էր. քանզի Աստուած ըսաւ. Չըլ-
լայ որ ժողովուրդը [յ] զղջայ՝ երբոր
պատերազմը տեսնէ, ու [ն] Եգիպտոս
18 դառնայ. Հապա Աստուած [շ] ժողո-
վուրդը Կարմիր ծովուն անապատին
ճամբայէն պտըտցուց. ու Իսրայէ-
լի որդիքը զունդ զունդ Եգիպ-
19 տոսի երկրէն ելան ։ Եւ Մովսէս՝
Յովսէփին ոսկորները իր հետը ա-
ռաւ. ինչու որ անիկայ Իսրայէլի
որդւոցը հաստատ [ո] երդում ընել
տուաւ՝ ըսելով. [չ] Անշուշտ Աս-
տուած ձեզի այցելութիւն պիտի
ընէ, ու իմ ոսկորներս ասկէ հե-
տերնիդ հանեցէք ։
20 Եւ [պ] Սոկքովթէն չուեցին, ու
Եթովմին մէջ անապատին ծայրը
21 իջևան ըրին ։ Եւ [ջ] Տէրը անոնց
առջևէն կ'երթար ցորեկը ամպի
սիւնով՝ անոնց ճամբայ ցուցընելու
համար, ու գիշերը կրակի սիւնով՝
անոնց լոյս տալու համար, որ ցորեկ
22 ու գիշեր երթան ։ Ցորեկը ամպի
սիւնը՝ ու գիշերը կրակի սիւնը՝ ժո-
ղովուրդին առջևէն չվերցուեցաւ ։

մ Հմր 9 ։
յ Գլ. ժգ. 11, 12 ։ Թուոց. ժգ. 1—4 ։
ն Բ Օր. ժէ. 16 ։
շ Գլ. ժգ. 2 ։ Թուոց. Լգ. 6, 7 ։
ո Ծն. ծ. 25 ։ Յեսու. իդ. 32 ։ Գործ. է. 16 ։
չ Թուոց. Լգ. 6 ։
պ Գլ. ժգ. 19, 24 ։ Ի. 38 ։ Թուոց. թ. 15 ։ ժ. 34 ։ ժդ. 14 ։ Բ Օր. ա. 33 ։ Նեեմ. թ. 12, 19 ։ Սաղ. հը. 14 ։ ղթ. 7 ։ Ես. դ. 5 ։ Ա Կոր. ժ. 1 ։

## ԳԼ. ԺԴ

1 Աստուած Իսրայէլացւոց կ'իմացընէ իրենց երթալու ճամբան ։ 5 Փարաւոն անոնց ետևէն կ'իյնայ ։ 10 Իսրայէլացիք տրտունջ կ'ընեն ։ 13 Մովսէս կը մխիթարէ զանոնք ։ 15 ու Աստուծմէ հրաման կ'ընդունի իր ընելիքին համար ։ 19 Ամպը բանակին ետին կը դառնայ ։ 21 Իսրայէլացիք Կարմիր ծովէն կ'անցնին. 23 իսկ Եգիպտացիք կը խեղդուին ։

1 Եւ Տէրը խօսեցաւ Մովսէսին՝ ըսե-
2 լով. Խօսէ Իսրայէլի որդւոցը՝
[ա] որ դառնան ու [բ] Փիհաիրոթին
առջևը՝ [գ] Մագդողին ու ծովին մէջ-
տեղը բանակ դնեն. Բէեղսեփոնին
առջին՝ անոր դիմացը ծովին քովը
3 բանակ դրէք ։ Եւ Փարաւոն Իս-
րայէլի որդւոցը համար պիտի ըսէ
թէ՝ [դ] Երկրին մէջ †մոլորած են,
անապատը անոնց բոլորտիքը պա-
4 տեց ։ Եւ [ե] Փարաւոնին սիրտը պի-
տի կարծրացընեմ, ու անոնց ե-
տևէն պիտի իյնայ. ու ես Փարա-
ւոնին վրայ և անոր բոլոր զօրքե-
րուն վրայ [զ] պիտի փառաւորուիմ,
[է] ու Եգիպտացիք պիտի գիտնան
թէ ես եմ Տէրը ։ Եւ անոնք ա-
նանկ ըրին ։
5 Եւ պատմուեցաւ Եգիպտոսի
թագաւորին թէ ժողովուրդը փա-

ա Գլ. ժգ. 18 ։
բ Թուոց. Լգ. 7 ։
գ Երեմ. խդ. 1 ։
դ Սաղ. հա. 11 ։
† Կամ շփոթուած
ե Գլ. դ. 21 ։ է. 3 ։
զ Գլ. թ. 16 ։ Հմր 17, 18 ։ Հռով. թ. 17 22, 23 ։
է Գլ. է. 5 ։

Ն. Ք. ԶՓ. 1491

ը Սաղ. ճե. 25։
թ Գլ. ժե. 4։
ժ Հմր 4։
ի Գլ. գ. 1։ ժդ. 9։ Թուոց. լգ. 3։
լ Գլ. ժե. 9։ Յես. իդ. 6։
խ Յես. իդ. 7։ Նեեմ. թ. 9։ Սաղ. լգ. 17։ ճէ. 6։
ծ Սաղ. ճզ. 7, 8։
կ Գլ. ե. 21։ զ. 9։
հ բ Մն. ի. 15, 17։ Ես. խա. 10, 13, 14։
ձ Հմր 25։ բ Օր. ա. 30։ գ. 22։ ի. 4։ Յես. ժ. 14, 42։ իգ. 3։ բ Մն. ի. 29։ Նեեմ. դ. 20։ Ես. լա. 4։
ղ Ես. լ. 15։
ճ Հմր 21, 26։ Գլ. է. 19։
մ Հմր 8։ Գլ. է. 3։
յ Հմր 4։

խաւ, եւ Փարաւոնին ու անոր ծա-
ռաներուն սիրտը ժողովուրդին
դէմ դարձաւ՝ ու ըսին. Մենք ինչու
ըրինք աս բանը, որ Իսրայէլը մե-
զի ծառայութիւն ընելէն թող
6 տուինք։ Եւ իր կառքը պատ-
րաստեց, ու իր ժողովուրդը իր
7 հետը առաւ։ Եւ թ վեց հարիւր
ընտիր կառքեր՝ ու Եգիպտոսի
բոլոր կառքերը՝ և անոնց ամէն
մէկուն վրայ ոստիկաններ առաւ։
8 Եւ Տէրը ժ Եգիպտոսի Փարաւոն
թագաւորին սիրտը կարծրացուց,
ու անիկայ Իսրայէլի որդւոցը
ետեւէն ինկաւ. և ի Իսրայէլի որ-
9 դիքը բարձր ձեռքով ելան։ Բայց
լ Եգիպտացիք անոնց ետեւէն ին-
կան. Փարաւոնին ամէն ձիերը
ու կառքերը՝ և անոր ձիաւորները
ու զօրքերը, և հասան անոնց՝ որ
բանակած էին ծովին մօտ Փիահիրո-
թին քովը՝ Բէեղսեփոնին առ-
ջին։
10 Եւ երբ Փարաւոն մօտեցաւ,
Իսրայէլի որդիքը իրենց աչքերը
վերցուցին, և ահա Եգիպտացիք
իրենց ետեւէն կու գային, ու խիստ
վախցան. և Իսրայէլի որդիքը խ Տա-
11 ղաղակեցին Տէրոջը։ ծ Եւ ըսին
Մովսէսին. Եգիպտոսի մէջ գերեզ-
մաններ չըլլալուն համար մեզ ա-
նապատին մէջ մեռնելու բերիր.
ինչ է աս մեզի ըրածդ որ մեզ
12 Եգիպտոսէն հանեցիր։ կ Աս չէ՞ր ան
խօսքը՝ որ քեզի զրուցեցինք Եգիպ-
տոսին մէջ՝ ըսելով. Թող տուր
մեզ՝ որ Եգիպտացւոց ծառայու-
թիւն ընենք. քանզի աւելի աղէկ է
մեզի Եգիպտացւոց ծառայութիւն
ընել, քան թէ անապատին մէջ
13 մեռնիլ։ Եւ Մովսէս ըսաւ ժողո-
վուրդին. հ Մի՛ վախնաք, կայնեցէ՛ք,
ու տեսէ՛ք Տէրոջը փրկութիւնը՝ որ
այսօր պիտի ընէ ձեզի. ինչու որ
ասօրուան ձեր տեսած Եգիպտա-
ցիները՝ մէյ մըն ալ պիտի չտեսնէք
14 յաւիտեան։ ձ Տէրը ձեզի համար
պիտի պատերազմի. ու դուք լռու-
կեցէք։
15 Եւ Տէրը ըսաւ Մովսէսին. Ին-
չու ինծի կ'աղաղակես. ըսէ Իսրա-
16 յէլի որդւոցը՝ որ չուեն։ Եւ ղ դուն
գաւազանդ վերցուր, ու ձեռքդ
ծովուն վրայ երկնցուր, ու ճեղքէ
զան. և Իսրայէլի որդիքը ծովուն
17 մէջէն ցամաքով երթան։ Եւ ես
ահա ճ Եգիպտացւոց սիրտը պիտի
կարծրացընեմ, ու անոնց ետեւէն
պիտի երթան. և ես մ Փարաւոնին
ու անոր բոլոր զօրքերուն վրայ՝ ա-
նոր կառքերուն ու անոր ձիաւորնե-
րուն վրայ պիտի փառաւորուիմ։
18 Եւ երբոր ես Փարաւոնին ու անոր

Ն. Ք. ԶՓ. 1491

ն Հմր 4։
շ Գլ. ժգ. 21։ իգ. 20։ լբ. 34։ Թուոց. ի. 16։ Ես. կգ. 9։
ո Տե՛ս Ես. ը. 14։ բ Կոր. դ. 3։
չ Հմր 16։
պ Սաղ. կզ. 6։
ջ Գլ. ժե. 8։ Յես. գ. 16։ դ. 23։ Նեեմ. թ. 11։ Սաղ. հզ. 13։ ճզ. 9։ ճժգ. 8։ Ես. կգ. 12։
ռ Հմր 29։ Գլ. ժե. 19։ Թուոց. լգ. 8։ Սաղ. կզ. 6։ հը. 13։ Ես. կգ. 13։ ա Կոր. ժ. 1։ Եբր. ժա. 29։
ս Ամբ. գ. 10։
վ Տե՛ս Սաղ. հէ. 17, ճ.։
տ Հմր 14։
ր Հմր 16։
ց Յես. դ. 18։
ւ Գլ. ժե. 1, 7։ բ Օր. ժա. 4։ Սաղ. հը. 53։ Նեեմ. թ. 11։ Եբր. ժա. 29։
փ Ամբ. գ. 8, 13։
ք Սաղ. ճզ. 11։
օ Հմր 22։ Սաղ. հէ. 20։ հը. 52, 53։
ֆ Սաղ. ճզ. 8, 10։
ա Սաղ. ծը. 10։ ծթ. 10։
* Եբր. ձեռքը։

կառքերուն և անոր ձիաւորներուն
վրայ փառաւորուիմ, Եգիպտացիք
ն պիտի գիտնան թէ ես եմ Տէրը։
19 Եւ Աստուծոյ հրեշտակը՝ շ որ
Իսրայէլի բանակին առջեւէն կ'եր-
թար, ելաւ, ու անոնց ետեւը գնաց.
և ամպի սիւնը ելաւ անոնց առջեւէն՝
20 ու անոնց ետին կայնեցաւ. Եւ
Եգիպտացւոց բանակին ու Իսրայէլի
բանակին մէջտեղը եկաւ՝ ու Եգիպ-
տացւոց ո ամպ ու խաւար եղաւ,
բայց Իսրայէլացւոց գիշերը լոյս կու
տար. և բոլոր գիշերը իրարու
չմօտեցան։
21 Եւ Մովսէս չ իր ձեռքը ծովուն
վրայ երկնցուց, ու Տէրը սաստիկ
արեւելեան հովով ետ դարձուց ծովը
բոլոր գիշերը, և պ ծովը ցամաք ը-
րաւ, ու ջուրերը ճեղքուեցան։
22 Եւ ջ Իսրայէլի որդիքը ծովուն մէ-
ջէն ցամաքով քալեցին. ու ջուրերը
անոնց աջ կողմէն ու ձախ կողմէն
ռ պարիսպ եղան։
23 Եւ Եգիպտացիք անոնց ետեւէն
ինկան, ու Փարաւոնին բոլոր ձիե-
րը՝ կառքերը ու ձիաւորները անոնց
ետեւէն ծովուն մէջտեղը գացին։
24 Եւ եղաւ որ առաւօտեան պահուն
ս Տէրը Եգիպտացւոց բանակին
նայեցաւ կրակի ու ամպի սիւնէն,
ու Եգիպտացւոց բանակը խռովու-
25 թեան մէջ ձգեց. Եւ անոնց կառ-
քերուն անիւները հանեց, ու դը-
ժուարութեամբ վարել տուաւ. ա-
նանկ որ Եգիպտացիք ըսին. Փախ-
չինք Իսրայէլէն երեսէն. ինչու որ
վ Եհովան տ անոնց համար Ե-
գիպտացւոց հետ կը պատերազմի։
26 Եւ Տէրը ըսաւ Մովսէսին.
ր Ձեռքդ ծովուն վրայ երկնցուր,
որ ջուրերը Եգիպտացւոց վրայ՝ ա-
նոնց կառքերուն ու անոնց ձիաւոր-
27 ներուն վրայ դառնայ։ Եւ
Մովսէս իր ձեռքը ծովուն վրայ
երկնցուց, և առտուան դէմ
ց ծովը իր տեղը դարձաւ, ու Ե-
գիպտացիք անոր դիմացէն փա-
խան. և Տէրը ւ թօթափեց Եգիպ-
28 տացիները ծովուն մէջ։ Եւ փ ջուրե-
րը դարձան՝ ու ք ծածկեցին Փարա-
ւոնին կառքերը ու ձիաւորները և
բոլոր զօրքերը՝ որոնք անոնց ետեւէն
ծովուն մէջ մտան. ու անոնցմէ
29 մէկն ալ չմնաց։ Բայց օ Իսրայէլի
որդիքը ծովուն մէջէն ցամաքով
կ'երթային, և ջուրերը անոնց աջ
կողմէն ու ձախ կողմէն անոնց պա-
30 րիսպ էին։ Եւ Տէրը ան օրը Ե-
գիպտացւոց ձեռքէն ֆ ազատեց Իս-
րայէլը. ու Իսրայէլ ա մեռած տե-
սաւ Եգիպտացիները ծովուն եզեր-
31 քը։ Եւ Իսրայէլ տեսաւ ան մեծ
* գործը՝ որն որ Տէրը ըրաւ Եգիպ-

տացւոց վրայ . ու ժողովուրդը վախցաւ Տէրոջմէն , ու հաւատաց Տէրոջը՝ և անոր ծառային Մովսէսին ։

## ԳԼ․ ԺԵ

1 Մովսէսին երգը ։ 22 Ժողովուրդը խմելու ջուր չգտներ ։ 23 Մեռայի լեղի ջուրերը՝ 25 փայտով մը կը քաղցրանան ։ 27 Եղիմի տասուերկու ջուրի աղբիւրները և եօթանասուն արմաւենիները ։

1 Այն ատենը Մովսէս ու Իսրայէլի
որդիքը աս երգը երգեցին Տէ-
րոջը , և խօսեցան ըսելով .
Պիտի երգեմ Տէրոջը , ինչու որ
փառքով փառաւորեալ է . ձին ու
անոր հեծեալը ծովը նետեց ։
2 Տէրն է իմ զօրութիւնս ու իմ
գովութիւնս , և իմ փրկութիւնս
եղաւ . Անիկայ է իմ Աստուածս ,
ու պիտի փառաւորեմ զանիկայ .
իմ հօրս Աստուածն է , ու պի-
տի բարձրացընեմ զանիկայ ։
3 Տէրը հզօր պատերազմող է .
անոր անունը ԵՀՈՎԱՅ է ։
4 Փարաւոնին կառքերը ու անոր
զօրքերը ծովը նետեց . և անոր
ընտիր ոստիկանները Կարմիր ծո-
վուն մէջ ընկղմեցան ։
5 Անդունդները ծածկեցին զա-
նոնք . քարի պէս խորունկը ի-
ջան ։
6 Քու աջ ձեռքդ՝ ով Տէր , փա-
ռաւորեալ է զօրութեամբ . քու
աջ ձեռքդ՝ ով Տէր , խորտակեց
թշնամին ։
7 Եւ քու փառացդ մեծութեամ-
բը քեզի դէմ կեցողները կործանե-
ցիր . քու բարկութիւնդ խրկեցիր ,
որ զանոնք յարդի պէս կերաւ ։
8 Եւ քու շունչիդ փչելովը ջուրե-
րը ժողվուեցան . հեղեղները դէ-
զի պէս կայնեցան . ծովուն մէջտե-
ղը անդունդները պաղեցան ։
9 Թշնամին ըսաւ . Պիտի հալա-
ծեմ , պիտի հասնիմ , աւարը պի-
տի բաժնեմ . իմ անձս անոնցմէ
պիտի կշտանայ . իմ սուրս պիտի
քաշեմ , իմ ձեռքս անոնց պիտի
տիրէ ։
10 Քու հովդ փչեցիր , ծովը զա-
նոնք ծածկեց . զօրաւոր ջուրերուն
մէջ կապարի պէս ընկղմեցան ։
11 Ո՛վ Տէր՝ աստուածներուն մէջ
քեզի պէս ո՞վ կայ . սրբութեան
մէջ փառաւորեալ , օրհնութեան
մէջ սքանչելի , հրաշքներ ընող
ո՞վ կայ քեզի նման ։
12 Քու աջ ձեռքդ երկընցուցիր ,
երկիրը զանոնք կլլեց ։
13 Քու ողորմութեամբդ առաջ-
նորդեցիր աս ժողովուրդին՝ որ
դուն փրկեցիր . քու զօրութեամբդ
տարիր զանոնք քու սուրբ բնակու-
թիւնդ ։
14 Ժողովուրդները պիտի լսեն , ու
սարսափին . Փղշտացւոց երկրին
բնակիչներուն ցաւ բռնեց ։
15 Այն ատենը Եդովմի իշխանները
պիտի տագնապին . Մովաբին զօ-
րաւորները պիտի դողան . Քանա-
նու բոլոր բնակիչները պիտի հա-
լին ։
16 Անոնց վրայ վախ ու դող պիտի
իյնայ . քու բազուկիդ մեծութե-
նէն քար պիտի կտրին , մինչև որ
անցնի քու ժողովուրդդ՝ ո՛վ Տէր ,
մինչև որ անցնի աս ժողովուրդը՝
որ դուն ստացար ։
17 Պիտի բերես զանոնք , ու քու
ժառանգութեանդ լեռը պիտի
տնկես զանոնք , ո՛վ Տէր , այն տե-
ղը՝ որն որ քու բնակութեանդ հա-
մար շինեցիր . ո՛վ Տէր , այն սրբա-
րանին մէջ՝ որն որ քու ձեռքերդ
շինեցին ։
18 Տէրը պիտի թագաւորէ յաւի-
տեանս յաւիտենից ։
19 Քանզի Փարաւոնին ձիերը իր
կառքերովը ու ձիաւորներովը ծովը
մտան , և Տէրը ծովուն ջուրերը
անոնց վրայ դարձուց . բայց Իսրա-
յէլի որդիքը ծովուն մէջէն ցամա-
քով գացին ։
20 Եւ Ահարոնին քոյրը Մարիամ
մարգարէն թմբուկը իր ձեռ-
քը առաւ . ու բոլոր կնիկները
թմբուկներով ու պարերով անոր
21 ետեւէն ելան ։ Եւ Մարիամ պա-
տասխան տուաւ անոնց .
Երգեցէ՛ք Տէրոջը՝ ինչու որ
փառքով փառաւորեալ է . ձին ու
անոր հեծեալը ծովը նետեց ։
22 Եւ Մովսէս Կարմիր ծովէն ճամ-
բայ հանեց Իսրայէլը , ու Սուրի
անապատը ելան . և իրեք օրուան
ճամբայ գացին անապատին մէջ , ու
23 ջուր չգտան ։ Ու երբոր Մեռայ
եկան , չէին կրնար խմել Մեռային
ջուրերէն , ինչու որ դառն էին , ա-
նոր համար անոր անունը *Մեռայ
24 կոչուեցաւ ։ Եւ ժողովուրդը
տրտնջեց Մովսէսին դէմ՝ ըսելով .
25 Ի՞նչ խմենք ։ Եւ անիկայ Տէրոջը
աղաղակեց , ու Տէրը անոր փայտ մը
ցուցուց , որն որ ջուրերուն մէջ
դրածին պէս՝ ջուրերը անուշցան ։
Հոն անոնց կանոն ու դատաստան
26 դրաւ , և հոն փորձեց զանոնք , Եւ
ըսաւ . Թէ որ Տէրոջը քու Աս-
տուծոյդ ձայնին ուշադրութեամբ

Ն․ Ք․ Ք․ 1491
բ Գլ․ դ․ 31։ ժթ․ 9։ Սաղ․ ճզ․ 12։ Յովհ․ բ․ 11։ ժա․ 45։
ա Դատ․ ե․ 1։ բ Թագ․ իբ․ 1։ Սաղ․ ճզ․ 12։
բ Հմր 21։
գ բ Օր․ ժ․ 21։ Սաղ․ ժը․ 2։ իբ․ 3։ ծթ․ 17։ կբ․ 6։ ճթ․ 1։ ճժը․ 14։ ճխ․ 7։ Եսա․ ժբ․ 2։ Ամբ․ գ․ 18, 19։
դ Գլ․ գ․ 15, 16։
ե բ Թագ․ իբ․ 47։ Սաղ․ ղթ․ 5։ ճժը․ 23։ Եսա․ իե․ 1։
զ Սաղ․ իդ․ 8։ Յայտ․ ժթ․ 11։
է Գլ․ զ․ 3։ Սաղ․ ձգ․ 18։
ը Գլ․ ժդ․ 28։
թ Գլ․ ժդ․ 7։
ժ Գլ․ ժդ․ 28։
ի Նեեմ․ թ․ 11։
լ Սաղ․ ճժը․ 15, 16։
խ բ Օր․ լդ․ 26։
ծ Եսա․ ե․ 24։ խէ․ 14։
կ Սաղ․ ծթ․ 13։
հ Գլ․ ժդ․ 21։ բ Թագ․ իբ․ 16։ Յոբ․ դ․ 9։ բ Թես․ բ․ 8։
ձ Սաղ․ հը․ 13։ Ամբ․ գ․ 10։
ղ Դատ․ ե․ 30։
ճ Ծն․ խթ․ 27։ Եսա․ ծդ․ 12։ Ղուկ․ ժա․ 22։
մ Գլ․ ժդ․ 21։ Սաղ․ ճխէ․ 18։
յ Հմր 5։ Գլ․ ժդ․ 28։
ն բ Թագ․ է․ 22։ գ Թագ․ ը․ 23։ Սաղ․ հա․ 19։ ձզ․ 8։ ձթ․ 6։ 8։ Երեմ․ ժ․ 6։ խթ․ 19։
շ Եսա․ զ․ 3։

Ն․ Ք․ Ք․ 1491
չ Սաղ․ հը․ 54։
պ Թուոց․ ժդ․ 14։ բ Օր․ բ․ 25։ Յեսու․ բ․ 9, 10։
ջ Սաղ․ խը․ 6։
ռ Ծն․ լզ․ 40։ բ Օր․ բ․ 4։
ս Թուոց․ իբ․ 3։ Ամբ․ գ․ 7։
վ Յեսու․ ե․ 1։
տ բ Օր․ բ․ 25։ ժա․ 25։ Յեսու․ բ․ 9։
ր ա Թագ․ իե․ 37։
ց Գլ․ ժթ․ 5։ բ Օր․ լբ․ 9։ բ Թագ․ է․ 23։ Սաղ․ հզ․ 2։ Եսա․ խդ․ 1, 3։ ծա․ 10։ Երեմ․ լա․ 11։ Տիտ․ բ․ 14։ ա Պետ․ բ․ 9։ բ Պետ․ բ․ 1։
ւ Սաղ․ խդ․ 2։ Ձ․ 8։
փ Սաղ․ հը․ 54։
ք Սաղ․ ժ․ 16։ խթ․ 10։ ճխզ․ 10։ Եսա․ ձէ․ 15։
օ Գլ․ ժգ․ 23։ Առակ․ իա․ 31։
ֆ Գլ․ ժգ․ 28, 29։
ա Թուոց․ իզ․ 59։
բ Դատ․ դ․ 4։ ա Թագ․ ժ․ 5։
գ ա Թագ․ ժը․ 6։
դ Դատ․ ժա․ 34։ իա․ 21։ բ Թագ․ զ․ 16։ Սաղ․ կը․ 11, 25։ ճխթ․ 8։ ճծ․ 4։
ե ա Թագ․ ժը․ 7։
զ Հմր 1։
է Ծն․ ժզ․ 7։ իե․ 18։
ը Թուոց․ լգ․ 8։
* Այս՝ դառնութիւն ։ Հռութ․ ա․ 20։
թ Գլ․ ժզ․ 2։ ժէ․ 3։

ա Սաղ․ հէ․ 14։ ե Հմր 6։ զ Սաղ․ հէ․ 15։
է Եսա․ զ․ 3։ ը Եսա․ զ․ 20։ Հռ․ 52։ ձ․ 1։ ճզ․ 9։ Եսա․ կգ․ 12, 13։ Երեմ․ բ․ 6։
ը Գլ․ ժդ․ 10։ ժէ․ 4։ Սաղ․ ծ․ 15։ ի Տեսոց Թագ․ բ․ 21։ դ․ 41։ ծ Տեսոց Յեսու․ իդ․ 25։ կ Գլ․ ժզ․ 4։ բ Օր․ ը․ 2, 16։ Դատ․ բ․ 22։ գ․ 1, 4։ Սաղ․ կզ․ 10։ ձա․ 7։ հ բ Օր․ է․ 12, 15։

Ն. Ք. ԶՔ.
1491

յ Բ Օր. ԻԸ. 27, 60։
ւ Գլ. ԻԳ. 25։ Սաղ. ԽԱ. 3, 4։ ՃԳ. 3։ ՃԽԷ. 3։
փ Թուոց. ԼԳ. 9։

մտիկ ընես, ու ինչ որ անոր առ-
ջին շիտակ է՝ ընես, և անոր պա-
տուիրանքներուն ականջ դնես, ու
անոր բոլոր կանոնները պահես, ան
յ ախտերուն մէկը քու վրադ պիտի
չբերեմ, որոնք Եգիպտացւոց վրայ
բերի. ինչու որ ես եմ Տէրը՝ ւ որ
քեզ կը բժշկեմ։
27 փ Եւ եկան Եղիմ, ու հոն տաս-
ուերկու ջուրի աղբիւրներ ու եօ-
թանասուն արմաւենիներ կային.
և հոն ջուրերուն քովը բանակ
դրին։

ԳԼ. ԺԶ

1 Իսրայելացիք Սին անապատը կը հասնին, 2 ու կերակուրի համար տրտունջ կ'ընեն։ 4 Աստուած երկինքէն հաց տալ կը խոստանայ։ 11 Լորամարգիները, 14 և մանանան կը իրկուին։ 16 Մանանայ ժողվելուն կանոնը։ 25 Շաբաթ օրերը մանանայ չէր իջներ։ 32 Աստուած կը պատուիրէ որ անկէ մէկ օմէր պահուի։

ա Թուոց. ԼԳ. 10, 11։
բ Եզեկ. Լ. 15։

1 Եւ ա չուեցին Եղիմէն, ու Իսրա-
յէլի որդւոցը բոլոր ժողովքը ե-
կան բ Սին անապատը՝ որ Եղիմին
ու Սինային մէջտեղն է, անոնց Ե-
գիպտոսի երկրէն ելլելուն երկրորդ
ամսուն տասնուհինգերորդ օրը։
2 Եւ Իսրայէլի որդւոցը բոլոր ժո-
ղովքը անապատին մէջ Մովսէսին
ու Ահարոնին դէմ գ տրտունջ ը-
3 րին. Եւ Իսրայէլի որդիքը ըսին ա-
նոնց. դ Երանի՜ թէ Տէրոջը ձեռ-
քովը մեռած ըլլայինք Եգիպտոսի
երկրին մէջ, ե երբոր միսի կաթսա-
ներուն քովը նստած էինք, ու
կուշտ հաց կ'ուտէինք. քանզի մեզ
աս անապատը հանեցիք, որ բոլոր
աս ժողովքը անօթութենէն մեռ-
ցընէք։
4 Եւ Տէրը ըսաւ Մովսէսին. Ահա
ես ձեզի երկինքէն զ հաց պիտի տե-
ղամ, և ժողովուրդը պիտի ելլէ՝
է ու օրէ օր ժողվէ ամէն մէկ օրուան
պէտք եղածը, որ ը փորձեմ զա-
նոնք՝ թէ իմ օրէնքիս համեմատ
5 պիտի քալեն՝ թէ չէ։ Եւ ըլլայ
որ վեցերորդ օրը բերածնին պատ-
րաստեն, և թ անիկայ ամէն օրուան
ժողվածներնուն կրկինը ըլլայ։
6 Եւ Մովսէս ու Ահարոն ըսին Իս-
րայէլի բոլոր որդւոցը. ժ Ա՛ւ ի-
րիկուն պիտի գիտնաք որ ձեզ Ե-
գիպտոսի երկրէն հանողը Եհո-
7 վան է։ Եւ առաւօտուն պիտի
տեսնէք ի Տէրոջը փառքը, ինչու
որ Տէրոջը դէմ ձեր ըրած տրտուն-
ջը ինքը լսեց. և լ մենք ո՞վ ենք՝
8 որ մեզի դէմ կը տրտնջէք։ Եւ
Մովսէս ըսաւ. Երբոր Տէրը ձեզի
իրիկունը ուտելու միս, ու առա-
ւօտուն կշտանալու չափ հաց տայ,
զի խ լսեց որ Տէրը լսած է իրեն
դէմ ըրած տրտունջնիդ. և մենք
ո՞վ ենք. ձեր տրտունջը մեզի

գ Գլ. ԺԵ. 24։ Սաղ. ՃԶ. 25։ ա Կոր. Ժ. 10։
դ Ողբ. Դ. 9։
ե Թուոց. ԺԱ. 4, 5։
զ Սաղ. ՀԸ. 24, 25։ ՃԵ. 40։ Յովհ. Զ. 31, 32։ ա Կոր. Ժ. 3։
է Առակ. Լ. 8։ Մատթ. Զ. 11։
ը Գլ. ԺԵ. 25։ Բ Օր. Ը. 2, 16։
թ Տես համր 22։ Ղև. ԻԵ. 21։
ժ Տես համր 12, 13։ Գլ. Զ. 7։ Թուոց. ԺԶ. 28, 29, 30։
ի Տես համր 10։ Ես. ԼԵ. 2։ Խ. 5։ Յովհ. ԺԱ. 4, 40։
լ Թուոց. ԺԶ. 11։

դէմ չէ, հապա խ Տէրոջը դէմ։
9 Եւ Մովսէս ըսաւ Ահարոնին. Իս-
րայէլի որդւոցը բոլոր ժողովքին
ըսէ. ծ Տէրոջը առջե՛ւը մօտեցէք.
ինչու որ ձեր տրտունջը լսեց։
10 Եւ եղաւ որ երբ Ահարոն Իսրա-
յէլի որդւոցը բոլոր ժողովքին կը
խօսէր, անոնք դէպ 'ի անապատը
նայեցան, և ահա Տէրոջը փառքը
11 կ ամպին մէջ երևցաւ։ Եւ Տէրը
12 խօսեցաւ Մովսէսին՝ ըսելով. հ Իս-
րայէլի որդւոցը տրտունջը լսեցի.
խօսէ՛ անոնց՝ ըսելով. ձ Իրիկուան
դէմ միս պիտի ուտէք, ու ղ առ-
տուանց հացով պիտի կշտանաք.
և պիտի գիտնաք թէ ես եմ Ե-
հովայ ձեր Աստուածը։
13 Եւ եղաւ որ իրիկունը ճ լորամար-
գիներ ելան, ու բանակը ծածկե-
ցին. և առտուանց բանակին բո-
14 լորտիքը մ ցօղ իջաւ։ Ու երբոր
իջած ցօղը վերցաւ, ահա անապա-
տին երեսին վրայ յ մանր * կլոր բան
մը կար՝ եղեամի պէս մանր գետնին
15 վրայ։ Ու երբոր Իսրայէլի որդիքը
տեսան, իրարու ըսին. † Ի՞նչ է աս".
քանզի ինչ ըլլալը չէին գիտեր. ու
Մովսէս ըսաւ անոնց. ն Աս է այն հա-
ցը՝ որ Տէրը ձեզի ուտելու տուաւ։
16 Տէրոջը պատուիրած բանը աս է.
ժողվեցէք անկէ՝ ամէն մէկերնիդ իր
կերածին չափ. ամէն մէկերնիդ իր
վրանին մէջ եղողներուն համար՝ ձեր
հոգիներուն համրանքին նայելով՝
մարդ գլուխ շ մէյմէկ օմէր առնէք։
17 Եւ Իսրայէլի որդիքը այնպէս ըրին.
և որը շատ՝ ու որը քիչ ժողվեց։
18 Եւ երբ օմէրով կը չափէին, ո շատ
ունեցողինը չաւելցաւ, ու քիչ ու-
նեցողինը չպակսեցաւ. ամէն մէկը
19 իր կերածին չափ ժողվեց։ Եւ
Մովսէս ըսաւ անոնց. Մէկը անկէ
20 մինչև առտու չպահէ։ Բայց մտիկ
չըրին Մովսէսին, հապա ոմանք
թողուցին անկէ մինչև առտու, և
որդնոտեցաւ ու հոտեցաւ. և Մով-
21 սէս բարկացաւ անոնց։ Եւ ամէն
առտու կը ժողվէին անկէ ամէն մէկը
իր կերածին չափ. ու արևը տաք-
ցածին պէս կը հալէր։
22 Եւ եղաւ որ վեցերորդ օրը կրկ-
նապատիկ ուտելիք՝ այսինքն ամէն
մէկուն համար երկու օմէր ժողվե-
ցին. և ժողովքին բոլոր իշխաննե-
րը եկան՝ ու պատմեցին Մովսէսին։
23 Եւ անիկայ ըսաւ անոնց. Աս է
Տէրոջը ըսածը. Վաղը չ հանգըս-
տութեան սուրբ շաբաթն է Տէրո-
ջը. ինչ որ պիտի եփէք՝ եփեցէ՛ք,
և ինչ որ պիտի եռացընէք՝ եռա-
ցուցէ՛ք, ու ինչ որ կ'աւելնայ՝ ձե-
զի համար առտուան թողուցէք։
24 Եւ անիկայ առտուան թողուցին՝

Ն. Ք. ԶՔ.
1491

խ Տես ա Թագ. Ը. 7, Ղուկ. Ժ. 16։ Հռով. ԺԳ. 2։
ծ Թուոց. ԺԶ. 16։
կ Համր 7։ Գլ. ԺԳ. 21։ Թուոց. ԺԶ. 19։ գ Թագ. Ը. 10, 11։
հ Համր 8։
ձ Համր 6։
ղ Համր 7։
ճ Թուոց. ԺԱ. 31։ Սաղ. ՀԸ. 27, 28։ ՃԵ. 40։
մ Թուոց. ԺԱ. 9։
յ Թուոց. ԺԱ. 7։ Բ Օր. Ը. 3։ Նեեմ. Թ. 15։ Սաղ. ՀԸ. 24։ ՃԵ. 40։
* Կամ թեփաձև
† ԵԲՐ. ՄԱՆ ՀՈՒ. (ուսկից կ'ելլէ մանանայ բառը։)
ն Յովհ. Զ. 31, 49, 58։ ա Կոր. Ժ. 3։
շ Համր 36։
ո բ Կոր. Ը. 15։
չ Ծն. Բ. 3։ Գլ. Ի. 8։ ԼԱ. 15։ ԼԵ. 3։ Ղև. ԻԳ. 3։

Ն. Ք. ՂՔ. 1491

Հմր 20 ։

Գլ. Ի. 9, 10 ։

Գ Թագ. ԺԷ. 14 ։ Սաղ. Հր. 10, 22 ։ Ճզ. 13 ։

Եբր. տունը

Թու. ԺԱ. 7, 8 ։

Եբր. Թ. 4 ։ Գլ. ԻԵ. 16, 21 ։ Խ. 20 ։ Թու. ԺԷ. 10 ։ Բ Օր. Ժ. 5 ։ Գ Թագ. Ը. 9 ։

Տես Թու. ԼԳ. 38 ։ Բ Օր. Ը. 2, 8 ։ Նեեմ. Թ. 20, 21 ։ Յով. Զ. 31, 49 ։

Յես. Ե. 12 ։ Նեեմ. Թ. 15 ։

Մովսէսին հրամայածին պէս . և
ո՛չ նեխեցաւ, ոչ ալ անոր մէջը
25 որդ եղաւ ։ Եւ Մովսէս ըսաւ .
Այսօր կերէք ան . ինչու որ այսօր
շաբաթ է Տէրոջը . այսօր դաշտին
26 մէջ անիկէ պիտի չգտնէք ։ Վեց
օր պիտի ժողվէք անիկայ . բայց
եօթներորդ օրը՝ որ շաբաթ է, պի-
27 տի չգտնուի ։ Եւ եղաւ որ եօթ-
ներորդ օրը ժողովուրդէն ոմանք
28 ժողվելու ելան, ու չգտան ։ Եւ
Տէրը ըսաւ Մովսէսին . Մինչև ե՞րբ
չէք ուզեր պահել իմ պատուի-
29 րանքներս ու օրէնքներս ։ Նայեցէ՛ք
որ Տէրը տուաւ ձեզի շաբաթը, ա-
նոր համար վեցերորդ օրը ինքը ձեզի
երկու օրուան հաց կու տայ . ամէն
մէկերնիդ իր տեղը թող նստի .
մէկը իր տեղէն չելլէ եօթներորդ
30 օրը ։ Եւ ժողովուրդը հանգստա-
31 ցաւ եօթներորդ օրը ։ Եւ Իսրայէ-
լի որդիքը անոր անունը Ման դը-
րին . ու ան գինձի սերմի պէս ճեր-
մակ՝ ու անոր համը մեղրով շինուած
գաթայի պէս էր ։
32 Եւ Մովսէս ըսաւ . Տէրոջը հրա-
մայած բանը աս է . Անկէ օմէր մը
լեցուցէ՛ք՝ որ ձեր ազգերուն մէջ
պահուի . որ անոնք տեսնեն ան
հացը՝ որն որ ձեզի կերցուցի անա-
պատին մէջ՝ երբոր ձեզ Եգիպտոսի
33 երկրէն հանեցի ։ Եւ Մովսէս ըսաւ
Ահարոնին . Սափոր մը առ, ու ա-
նոր մէջը օմէր մը լեցուն մանանայ
դիր . և անիկայ ձեր ազգերուն մէջ
պահուելու համար Տէրոջը առջե՛ւը
34 դիր ։ Ինչպէս որ Տէրը Մովսէսին
պատուիրեց, անանկ ալ Ահարոն
վկայութեան առջեւը դրաւ զանի-
35 կայ՝ որ պահուի ։ Եւ Իսրայէլի որ-
դիքը քառասուն տարի կերան մա-
նանան, մինչև որ շէն երկիր եկան .
մանանան կերան՝ մինչև որ Քանա-
36 նու երկրին սահմանը եկան ։ Եւ
օմէրը արդուին տասներորդ մասն է ։

## ԳԼ. ԺԷ

1 Ժողովուրդը ջուրի համար տրտունջ կ՚ընէ Ռափիդիմի մէջ ։ 5 Աստուած Քորէբի մէջ ժայռէ մը ջուր հանել կու տայ ։ 8 Մովսէս իր ձեռքը վեր բռնելով՝ Ամաղէկը կը յաղթուի ։ 15 Մովսէս սեղան մը կը շինէ՝ ու զանիկայ կ՚անուանէ Եհովանիսի ։

Գլ. ԺԶ. 1 ։ Թու. ԼԳ. 12, 14 ։

Թու. Ի. 3, 4 ։

Բ Օր. Զ. 16 ։ Սաղ. Հը. 18, 41 ։ Ես. Է. 12 ։ Մատ. Դ. 7 ։ Ա Կոր. Ժ. 19 ։

1 Եւ Իսրայէլի որդւոց բոլոր ժո-
ղովքը Տէրոջը խօսքին պէս ի-
րենց գնացքին համեմատ Սին անա-
պատէն չուեցին, և Ռափիդիմի մէջ
բանակ դրին . ու ժողովուրդին հա-
2 մար խմելու ջուր չկար ։ Եւ ժողո-
վուրդը Մովսէսին հետ վիճեցաւ ու
ըսաւ . Մեզի ջո՛ւր տուր, որ խմենք .
և Մովսէս ըսաւ անոնց . Ինչո՞ւ ին-
ծի հետ կը վիճիք . ինչո՞ւ Տէրը կը
3 փորձէք ։ Եւ ժողովուրդը հոն ջու-
րի համար ծարաւեցաւ . ու ժողո-
վուրդը Մովսէսին դէմ տրտունջ
ըրաւ ու ըսաւ . Ինչո՞ւ համար մեզ
Եգիպտոսէն հանեցիր, որ մեզ ու
մեր որդիները և մեր հօտերը ծարա-
ւութեամբ մեռցընես ։
4 Եւ Մովսէս Տէրոջը աղաղա-
կեց՝ ըսելով . Ի՞նչ ընեմ աս ժո-
ղովուրդին . դրեթէ պատրաստ են
5 իս քարկոծելու ։ Եւ Տէրը ը-
սաւ Մովսէսին . Ժողովուրդին
առջե՛ւը անցիր, ու Իսրայէլի ծե-
րերէն քու հետդ առ, և քու գա-
ւազանդ՝ որով գետը զարկիր,
6 ձեռքդ առ՝ ու գնա՛ ։ Ահա՛
Քորէբին մէջ ժայռին վրայ՝ հոն
քու առջեւդ կը կայնիմ, և ժայ-
ռին զա՛րկ, ու անկէ ջուր պիտի
ելլէ, և ժողովուրդը պիտի խմէ ։
Եւ Մովսէս անանկ ըրաւ Իսրայէլի
7 ծերերուն առջեւը ։ Եւ ան տեղին
անունը Մասսա ու Մերիպա
դրաւ . ինչու որ Իսրայէլի որդիքը
հոն վիճեցան, և Տէրը փորձեցին՝
ըսելով . Արդեօք Տէրը մեր մէ՞ջն
է՝ թէ չէ ։
8 Ան ատենը Ամաղէկը եկաւ, ու
Ռափիդիմի մէջ Իսրայէլին հետ
9 պատերազմեցաւ ։ Եւ Մովսէս ը-
սաւ Յեսուին . Մեզի մարդիկ
ընտրէ, ու Ամաղէկին հետ պատե-
րազմելու ելիր . վաղը ես բլուրին
գլուխը պիտի կայնիմ՝ Աստուա-
ծոյ գաւազանը ձեռքս բռնելով ։
10 Եւ Յեսու՝ Մովսէսին ըսածին պէս
ըրաւ, ու Ամաղէկին հետ պատե-
րազմեցաւ, և Մովսէսը՝ Ահարոնը
ու Ովրը՝ բլուրին գլուխը ելան ։
11 Եւ կ՚ըլլար որ՝ երբոր Մովսէս իր
ձեռքերը վեր կը վերցընէր, Իսրա-
յէլը կը յաղթէր, ու երբոր իր
ձեռքերը վար կ՚իջեցընէր, Ամաղէ-
12 կը կը յաղթէր ։ Եւ Մովսէսին
ձեռքերը ծանրանալուն՝ քար մը
առին ու անոր տակը դրին, և ինքը
անոր վրան նստաւ . ու Ահարոնը
և Ովրը՝ մէկը մէկ կողմէն ու մէկալը
միւս կողմէն՝ անոր ձեռքերը վեր
բռնեցին, ու մինչև արեգակին մարը
մտնելը անոր ձեռքերը հաստա-
13 տուն մնացին ։ Եւ Յեսու սուրի
բերնէ անցուց Ամաղէկը ու անոր
14 ժողովուրդը ։ Եւ Տէրը ըսաւ Մով-
սէսին . Ասիկայ յիշատակի հա-
մար գիրքի մէջ գրէ, ու Յեսուին
իմացուր՝ որ Ամաղէկին յիշա-
տակը երկինքին տակէն բոլորովին
15 պիտի ջնջեմ ։ Եւ Մովսէս սեղան
մը շինեց, ու անոր անունը Ե-
16 հովանիսի դրաւ, Ու ըսաւ . Քան-
զի Տէրը երդում ըրաւ ըսելով թէ
Տէրը ազգէ ազգ պիտի պատերազմի
Ամաղէկին դէմ ։

Ն. Ք. ՂՔ. 1491

Գլ. ԺԴ. 2 ։

Գլ. ԺԴ. 15 ։

Ա Թագ. Լ. 6 ։ Յով. Ը. 59 ։ Ժ. 31 ։

Տես Եզեկ. Բ. 6 ։

Գլ. Է. 20 ։ Թու. Ի. 8 ։

Թու. Ի. 10, 11 ։ Սաղ. Հը. 15, 20 ։ ՃԵ. 41 ։ ՃԺԴ. 8 ։ Ա Կոր. Ժ. 4 ։

Թու. Ի. 13 ։ Սաղ. Ձա. 7 ։ ՂԵ. 8 ։ Եբր. Գ. 8 ։

Որ է՝ փորձութիւն ու վիճաբանութիւն ։

Ծն. ԼԶ. 12 ։ Թու. ԻԴ. 20 ։ Բ Օր. ԻԵ. 17 ։ Ա Թագ. ԺԵ. 2 ։

Գոր. Է. 45 ։ Եբր. Դ. 8 ։

Գլ. Դ. 20 ։

Յակ. Ե. 16 ։

Գլ. ԼԴ. 27 ։

Եբր. ականջներուն մէջը դիր՝

Թու. ԻԴ. 20 ։ Բ Օր. ԻԵ. 19 ։ Ա Թագ. ԺԵ. 3, 7 ։ Լ. 1, 17 ։ Բ Թագ. Ը. 12 ։ Եզր. Թ. 14 ։

Տես Դատ. Զ. 24 ։

Որ է՝ Տէրը իմ դրօշակս է ։

Կամ Որովհետև ձեռք կայ Տէրոջը աթոռին դէմ ։

Ն. Ք. Ղ. Ք. 1491

## ԳԼ. ԺԸ

1 Յոթոր Մովսէսին կը բերէ անոր կնիկը ու տղաքը ։ 7 Մովսէս զանիկայ կը մեծարէ ։ 13 ու անոր խրատները կը բռնէ ։ 27 Յոթոր կը մեկնի ։

1 Եւ Մովսէսին աները՝ Մադիա-
մու քուրմը Յոթոր լսեց ան
ամէնը որ Աստուած ըրաւ Մովսէ-
սին ու իր Իսրայէլ ժողովուրդին ,
և թէ Տէրը Եգիպտոսէն հանեց
2 Իսրայէլը ։ Եւ Մովսէսին աները
Յոթոր առաւ Մովսէսին կնիկը
Սեպփորան , անիկայ ետ խրկելէն
3 ետքը . Եւ անոր երկու որդիքը՝
որոնց մէկուն անունը Գերսամ
էր . ինչու որ ինքը ըսեր էր . Օ-
տար երկրի մէջ պանդուխտ եմ .
4 Եւ մէկալին անունը *Եղիազար
էր . ինչու որ ըսեր էր . Իմ հօրս
Աստուածը իմ օգնականս էր , ու
իս Փարաւոնին սուրէն ազատեց ։
5 Եւ Մովսէսին աները Յոթոր՝ անոր
որդիներովը ու անոր կնիկովը ե-
կաւ Մովսէսին դէպ 'ի անապատը՝
ուր որ անիկայ բանակ դրեր էր
6 Աստուծոյ լեռանը քովը . Եւ
իմացուց Մովսէսին ըսելով . Ես
քու աներդ Յոթոր քեզի կու գամ ,
նաև քու կնիկդ իր երկու որդիքը
7 իր հետը ունենալով ։ Եւ Մովսէս
իր աները դիմաւորելու ելաւ , և
անոր խոնարհութիւն ըրաւ , ու
համբուրեց զանիկայ . և իրարու
ողջութիւնը հարցուցին՝ ու վրա-
8 նը մտան ։ Եւ Մովսէս իր աներին
պատմեց ան ամէնը՝ որ Տէրը ըրաւ
Փարաւոնին ու Եգիպտացիներուն՝
Իսրայէլին համար , և ճամբուն մէջ
բոլոր իրենց քաշած աշխատու-
թիւնը , ու Տէրոջը զանոնք ա-
9 զատելը ։ Եւ Յոթոր ուրախացաւ
բոլոր բարութիւններուն համար՝
որ Տէրը ըրաւ Իսրայէլին , փրկելով
զանոնք Եգիպտացւոց ձեռքէն ։
10 Եւ Յոթոր ըսաւ . Օրհնեալ ըլլայ
Տէրը՝ որ ազատեց ձեզ Եգիպտա-
ցւոց ձեռքէն՝ ու Փարաւոնին
ձեռքէն . ինչու որ ազատեց ժո-
ղովուրդը Եգիպտացւոց ձեռքին
11 տակէն ։ Հիմա գիտեմ որ Եհո-
վան բոլոր աստուածներէն մեծ է .
քանզի ինչ բանի մէջ որ կը
հպարտանային , անոնցմէ վեր ելա-
12 ւ ։ Եւ Մովսէսին աները Յո-
թոր ողջակէզ ու զոհեր բերաւ
Աստուծոյ . և Ահարոն ու Իսրայէլի
բոլոր ծերերը Մովսէսին աներոջը
հետ Աստուծոյ առջևը հաց ու-
տելու եկան ։
13 Եւ եղաւ որ հետևեալ օրը Մովսէս
ժողովուրդը դատելու նստաւ , ու
ժողովուրդը առաւօտէն մինչև ի-
րիկուն Մովսէսին քովը կայնեցաւ ։
14 Եւ Մովսէսին աները երբոր տեսաւ
ինչ որ կ'ընէր Մովսէս ժողովուր-
դին , ըսաւ . Ի՞նչ է աս բանը՝ որ
դուն կ'ընես ժողովուրդին . ինչո՞ւ
դուն մինակ կը նստիս , ու բոլոր
ժողովուրդը առաւօտէն մինչև
15 իրիկուն քու քովդ կը կայնի ։ Եւ
Մովսէս ըսաւ իր աներին . Քանզի
ժողովուրդը կու գայ ինծի՝ Աս-
տուծմէ [illegible] հարցընելու ։
16 Երբոր անոնք դատ մը ունենան՝
ինծի կու գան , և ես անոնց մէջ-
տեղը դատաստան կ'ընեմ , ու Աս-
տուծոյ կանոնները ու օրէնքները
17 անոնց կը գիտցընեմ ։ Եւ Մովսէսին
աները ըսաւ անոր . Քու ըրածդ
18 աղէկ բան չէ ։ Իրաւցընէ դուն պի-
տի մաշիս , դուն ալ [illegible] քու հետդ
եղած աս ժողովուրդն ալ . ինչու
որ աս բանը քեզի շատ ծանր է .
դուն մինակ չես կրնար ընել աս ։
19 Հիմա մտիկ ըրէ իմ խօսքս , ես
քեզի խրատ տամ , ու Աստուած
քեզի հետ պիտի ըլլայ ։ Ժողո-
վուրդին համար Աստուծոյ առջևը
դուն գնա , որ դատերը դուն
20 ներկայացընես Աստուծոյ . Եւ ա-
նոնց սորվեցուր կանոնները ու օ-
րէնքները , և գիտցուր անոնց ի-
րենց քալելու ճամբան՝ ու իրենց
21 ընելու գործը ։ Ուստի դուն բոլոր
ժողովուրդէն կարող մարդիկ՝
Աստուծմէ վախցող՝ ճշմարտա-
սէր [illegible] ագահութիւնը ատող
մարդիկ ընտրէ , ու [illegible] հազարա-
պետներ՝ հարիւրապետներ՝ յիսնա-
պետներ ու տասնապետներ դիր ա-
22 նոնց վրայ , Ու ամէն ատեն թող
անոնք դատեն ժողովուրդը . և ա-
մէն մեծ բանը քեզի ներկայացը-
նեն , ու ամէն պզտիկ բանը անոնք
դատեն . այսպէս քեզի օգնելով՝
քու վրայէդ բեռը կը թեթևցընեն ։
23 Թէ որ աս բանը ընես , ու Աստուած
ալ քեզի [illegible] պատուիրէ , ան
ատենը կարող կ'ըլլաս դիմանա-
լու , և բոլոր աս ժողովուրդն ալ
խաղաղութեամբ իրենց տեղը
կ'երթան ։
24 Եւ Մովսէս իր աներին խօսքը
մտիկ ըրաւ , ու անոր ամէն ըսածը
25 ըրաւ ։ Եւ Մովսէս բոլոր Իսրայէ-
լէն կարող մարդիկ ընտրեց , ու
զանոնք ժողովուրդին վրայ գլուխ-
ներ՝ [illegible] հազարապետներ՝ հա-
րիւրապետներ՝ յիսնապետներ ու
26 տասնապետներ կարգեց ։ Եւ ամէն
ատեն անոնք կը դատէին ժողո-
վուրդը . դժուարին բանը Մովսէ-
սին կը ներկայացընէին , ու ամէն
պզտիկ բանը իրենք կը դատէին ։
27 Եւ Մովսէս իր աները ճամբայ հա-
նեց , ու անիկայ իր երկիրը գնաց ։

ա Գլ. բ. 16 ։ գ. 1 ։
բ Սաղ. խդ. 1 ։ հէ. 14, 15 ։ հը. 4 ։ ճե. 5, 43 ։ ճզ. 2, 8 ։
գ Գոր. է. 29 ։
դ Գլ. բ. 22 ։
* Եբ. Իմ Աստուածս օգնական ։
ե Գլ. գ. 1, 12 ։
զ Ծն. ժդ. 17 ։ ժը. 2 ։ ժթ. 1 ։ Գ Թագ. բ. 19 ։
է Ծն. իթ. 13 ։ լգ. 4 ։
ը Ծն. խգ. 27 ։ Բ Թագ. ժա. 7 ։
թ Թուե. ի. 14 ։
ժ Սաղ. հը. 42 ։ ձա. 7 ։ ճզ. 10 ։ ճէ. 2 ։
ի Ծն. ժդ. 20 ։ Բ Թագ. ժը. 28 ։ Ղուկ. ա. 68 ։
լ Բ Մն. բ. 5 ։ Սաղ. ղե. 3 ։ ղէ. 9 ։ ճլե. 5 ։
խ Գլ. ա. 10, 16, 22 ։ ե. 2, 7 ։ ժդ. 8, 18 ։
ծ Ա Թագ. բ. 3 ։ Նեեմ. թ. 10, 16, 29 ։ Յոբ. լ. 11, 12 ։ Սաղ. լա. 23 ։ ճժթ. 21 ։ Ղուկ. ա. 51 ։
կ Բ Օր. ժբ. 7 ։ Ա Մն. իթ. 22 ։ Ա Կոր. ժ. 18, 21, 31 ։

հ Ղև. իդ. 12 ։ Թուե. ժե. 34 ։
ձ Գլ. իդ. 7 ։ իդ. 14 ։ Բ Օր. ժէ. 8 ։ Բ Թագ. ժե. 3 ։ Յոբ. լա. 13 ։ Գործ. ժը. 15 ։ Ա Կոր. զ. 1 ։
† Եբր. մարդուն ու իր ընկերին
ղ Ղև. իդ. 15 ։ Թուե. ժե. 35 ։ իե. 6, [illegible] ։ լզ. 6, 7, 8, 9 ։
ճ Թուե. ժա. 14, 17 ։ Բ Օր. ա. 9, 12 ։
մ Գլ. գ. 12 ։
յ Գլ. դ. 16 ։ ի. 19 ։ Բ Օր. ե. 5 ։
ն Թուե. իէ. 5 ։
շ Բ Օր. դ. 1, 5 ։ ե. 1 ։ զ. 1, 2 ։ է. 11 ։
ո Սաղ. ճխգ. 8 ։
չ Բ Օր. ա. 18 ։
պ Հմր 25 ։ Բ Օր. ա. 15, 16 ։ ժզ. 18 ։ Բ Մն. ժթ. 5-10 ։ Գործ. զ. 3 ։
ջ Ծն. խբ. 18 ։ Բ Թագ. իգ. 3 ։ Բ Մն. ժթ. 9 ։
ռ Եզեկ. ժը. 8 ։
ս Բ Օր. ժզ. 19 ։
վ Հմր 26 ։
տ Հմր 26 ։ Ղև. իդ. 11 ։ Թուե. ժե. 33 ։ իէ. 2 ։ լզ. 1 ։ Բ Օր. ա. 17 ։ ժէ. 8 ։
ր Թուե. ժա. 17 ։
ց Հմր 18 ։
ւ Ծն. ժը. 33 ։ լ. 25 ։ Գլ. ժզ. 29 ։ Բ Թագ. ժթ. 39 ։
փ Բ Օր. ա. 15 ։ Գործ. զ. 5 ։
ք Հմր 22 ։
օ Յոբ. իթ. 16 ։
ֆ Թուե. ժ. 29, 30 ։

Ն.Ք.ՎՔ.
1491

ա Թու. ԼԳ. 15։
բ Գլ. ԺԷ. 1, 8։
գ Գլ. Գ. 1, 12։
դ Գլ. Ի. 21։ Գոր. Է. 38։
ե Գլ. Գ. 4։
զ բ Օր. ԻԹ. 2։
է բ Օր. ԼԲ. 11։ Ես. ԿԳ. 9։ Յայտ. ԺԲ. 14։
ը բ Օր. Ե. 2։
թ բ Օր. Դ. 20։ Է. 6։ ԺԴ. 2, 21։ ԻԶ. 18։ ԼԲ. 8, 9։ գ Թագ. Ը. 53։ Սաղ. ՃԼԵ. 4։ Երգ. Ը. 12։ Ես. ԽԱ. 8։ ԽԴ. 1։ Երեմ. Ժ. 16։ Մաղ. Գ. 17։ Տիտ. Բ. 14։
ժ Գլ. Թ. 29։ բ Օր. Ժ. 14։ Յոբ. ԽԱ. 11։ Սաղ. ԻԴ. 1։ Ծ. 12։ ա Կոր. Ժ. 26, 28։
ի բ Օր. ԼԳ. 2, 3, 4։ ա Պետ. Բ. 5, 9։ Յայտ. Ա. 6։ Ե. 10։ Ի. 6։
լ Ղև. Ի. 24, 26։ բ Օր. Է. 6։ ԻԶ. 19։ ԻԸ. 9։ Ես. ԿԲ. 12։ ա Կոր. Գ. 17։ ա Թես. Ե. 27։
խ Գլ. ԻԴ. 3, 7։ բ Օր. Ե. 27։ ԻԶ. 17։
ծ Հմր 16։ Գլ. Ի. 21։ ԻԴ. 15, 16։ բ Օր. Դ. 11։ Սաղ. ԺԸ. 11, 12։ ՂԷ. 2։ Մատ. ԺԷ. 5։
կ բ Օր. Դ. 12, 36։ Յոհ. ԺԲ. 29, 30։
հ Գլ. ԺԴ. 31։
ձ Ղև. ԺԱ. 44, 45։ Եբր. Ժ. 22։
ղ Հմր 14։
ճ Ծն. ԼԵ. 2։ Ղև. ԺԵ. 5։
մ Հմր 16, 18։ Գլ. ԼԴ. 5։ բ Օր. ԼԴ. 2։
յ Եբր. ԺԲ. 20։

## ԳԼ. ԺԹ

1 Ժողովուրդը Սինայի անապատը կու գայ ։ 3 Աստուծոյ պատգամը Մովսէսին ձեռքովը լեռնէն ժողովուրդին կը խրկուի ։ 8 Մովսէս ժողովուրդին պատասխանը Աստուծոյ կը տանի ։ 10 Ժողովուրդը երրորդ օրուան համար կը պատրաստուի ։ 12 Լեռան մօտենալը կ'արգիլուի ։ 16 Աստուծոյ ահագին երեւյթը լեռանը վրայ ։

1 Երրորդ ամսուն մէջ՝ Իսրայէլի
որդւոցը Եգիպտոսի երկրէն ելլելէն ետքը, նոյն օրը ա Սինայի ա-
2 նապատը եկան ։ Քանզի բ Ռափիդիմէն չուեցին, ու Սինայի անապատը եկան, ու անապատին մէջ բանակ դրին. և Իսրայէլը հոն գ լեռանը դիմացը բանակ դրաւ ։
3 Եւ դ Մովսէս Աստուծոյ ելաւ. ու Տէրը ե լեռնէն կանչեց զանիկայ՝ ըսելով. Յակոբին տանը ասանկ բսես, և Իսրայէլի որդւոցը իմացը-
4 նես. զ Դուք տեսաք ինչ որ ըրի Եգիպտացւոց. և է ինչպէս ձեզ արծիւի թեւերուն վրայ վերցուցի՝ ու
5 քովս բերի ։ Եւ հիմա ը եթէ որ իրաւցընէ իմ ձայնիս հնազանդիք՝ ու իմ ուխտս պահէք, թ դուք ինծի սեփհական ժողովուրդ պիտի ըլլաք ամէն ազգերէն. ինչու որ
6 ժ բոլոր երկիրը իմս է ։ Եւ դուք ինծի ի քահանաներու թագաւորութիւն՝ ու լ սուրբ ազգ մը պիտի ըլլաք. Իսրայէլի որդւոցը զրուցելու խօսքերդ ասոնք են ։
7 Եւ Մովսէս եկաւ ու ժողովուրդին ծերերը կանչեց, և Տէրոջը իրեն պատուիրած աս բոլոր խօսքերը
8 անոնց առջեւը դրաւ ։ Եւ խ բոլոր ժողովուրդը միաբերան պատասխանեցին ու ըսին. Տէրոջը բոլոր ըսածները պիտի ընենք ։ Եւ Մովսէս ժողովուրդին խօսքերը Տէրոջը դարձուց ։
9 Եւ Տէրը ըսաւ Մովսէսին. Ահա ես քեզի կու գամ ծ թանձր ամպի մը մէջ, կ որ ժողովուրդը լսէ՝ երբոր ես քեզի հետ խօսիմ, ու նաև հ յաւիտեան քեզի հաւատայ ։ Եւ Մովսէս ժողովուրդին խօսքերը Տէրոջը
10 պատմեց ։ Եւ Տէրը ըսաւ Մովսէսին. Գնա ժողովուրդին, և ձ զանոնք սրբէ այսօր ու վաղը, և թող
11 իրենց լաթերը լուան ։ Ու երրորդ օրուան համար պատրաստ ըլլան. քանզի երրորդ օրը Տէրը բոլոր ժողովուրդին աչքին առջեւը Սինայ
12 լեռանը վրայ պիտի իջնէ ։ Եւ դուն ժողովուրդին բոլորտիքը սահման դնես՝ ըսելով. Ինքզինքնիդ զգուշացուցէք. Ձեր լեռը ելլելէն՝ կամ անոր ծայրին դպչելէն զգուշացուցէք. ղ ով որ լեռանը դպչի, անշուշտ պիտի մեռ-
13 նի ։ Անոր ձեռք պիտի չդպչի. քանզի ճ քարերով անպատճառ պիտի քարկոծուի, կամ նետով զարնուի. թէ անասուն ըլլայ՝ և թէ մարդ՝ պիտի չապրի. երբոր մ փողին ձայնը երկար հնչուի, անոնք լեռը պիտի ելլեն ։
14 Եւ Մովսէս լեռնէն իջաւ ի ժողովուրդը իջաւ, ու ն սրբեց ժողովուրդը. և անոնք իրենց լաթերը
15 լուացին ։ Եւ անիկայ ըսաւ ժողովուրդին. շ Երրորդ օրուան համար պատրաստ եղէք. ո Ձեր կնիկներուն մի՛ մերձենաք ։
16 Եւ եղաւ որ երրորդ օրը առտուանց չ որոտումներ ու կայծակներ կ'ըլլային, և պ թանձր ամպ մը կար լեռանը վրայ, ու խիստ սաստիկ ջ փողի ձայն մը, և բանակին մէջ եղած բոլոր ժողովուրդը ռ զար-
17 հուրեցաւ ։ Եւ ս Մովսէս՝ բանակէն Աստուծոյ առջեւը հանեց ժողովուրդը. ու անոնք լեռանը տակը
18 կայնեցան ։ Եւ վ Սինայ լեռը բոլորովին կը մխար. ինչու որ Տէրը անոր վրայ տ կրակով իջաւ. ր ու անոր մուխը հնոցի մուխի պէս կ'ելլէր, և ց բոլոր լեռը սաստիկ կը դո-
19 ղար ։ Եւ ւ քանի որ փողին ձայնը կը սաստկանար, փ Մովսէս խօսեցաւ, ու ք Աստուած ձայնով մը
20 անոր պատասխան տուաւ ։ Եւ Տէրը Սինայ լեռանը վրայ՝ լեռանը գլուխը իջաւ. ու Տէրը կանչեց Մովսէսը լեռանը գլուխը, և Մով-
21 սէս ելաւ ։ Եւ Տէրը ըսաւ Մովսէսին. Իջի՛ր՝ ժողովուրդին պատուիրէ, որ չըլլայ թէ Տէրը օ տեսնելու համար սահմանէն անցնին,
22 ու անոնցմէ շատերը կորսուին ։ Եւ Տէրոջը մօտեցող քահանաներն ալ ֆ սրբուին, որ չըլլայ թէ Տէրը ա անոնց վրայ յարձակի ։
23 Եւ Մովսէս ըսաւ Տէրոջը. Ժողովուրդը չկրնար ելլել Սինայ լեռը. ինչու որ դուն մեզի խօսեցար՝ ըսելով. բ Սահման դիր լեռանը, ու անիկայ սրբէ ։
24 Եւ Տէրը ըսաւ անոր. Գնա՛ վա՛ր իջիր, ու Ահարոնին հետ մէկտեղ ելի՛ր. բայց քահանաները ու ժողովուրդը Տէրոջը ելլելու համար՝ սահմանէն չանցնին, որ չըլլայ թէ
25 անոնց վրայ յարձակի ։ Ու Մովսէս ժողովուրդին իջաւ, և այնպէս խօսեցաւ անոնց ։

## ԳԼ. Ի

1 Տասը պատուիրանքները ։ 18 Ժողովուրդը կը վախնայ ։ 20 ու Մովսէսէն կը մխիթարուի ։ 22 Կռապաշտութիւնը կ'արգիլուի ։ 24 Սեղան շինուելուն կերպը ։

1 Եւ Աստուած ա աս բոլոր խօսքերը
զրուցեց՝ ըսելով.
2 բ Ես եմ Եհովայ քու Աստուածդ՝ որ քեզ Եգիպտոսի երկրէն՝ գ ծառայութեան տունէն հանեցի ։

Ն.Ք.ՎՔ.
1491

յ Հմր 16, 19։
ն Հմր 10։
շ Հմր 11։
ո ա Թագ. Ի. 4, 5։ Զաք. Է. 3։ ա Կոր. Է. 5։
չ Սաղ. ՀԵ. 18։ Եբր. ԺԲ. 18, 19։ Յայտ. Դ. 5։ Ը. 5։ ԺԱ. 19։
պ Հմր 9։ Գլ. Խ. 34։ բ Մն. Ե. 14։
ջ Յայտ. Ա. 10։ Դ. 1։
ռ Եբր. ԺԲ. 21։
ս բ Օր. Դ. 10։
վ բ Օր. Դ. 11։ ԼԳ. 2։ Դատ. Ե. 5։ Սաղ. ԿԸ. 7, 8։ Ես. Զ. 4։ Ամբ. Գ. 3։
տ Գլ. Գ. 2։ ԻԴ. 17։ բ Մն. Է. 1, 2, 3։
ր Ծն. ԺԹ. 28։ Սաղ. ՃԽԴ. 5։ Յայտ. ԺԵ. 8։
ց Սաղ. ԿԸ. 8։ ՀԷ. 18։ ՃԺԴ. 7։ Երեմ. Դ. 24։ Եբր. ԺԲ. 26։
ւ Հմր 13։
փ Եբր. ԺԲ. 21։
ք Նեեմ. Թ. 13։ Սաղ. ՁԱ. 7։
օ Տես գլ. Դ. 5։ ա Թագ. Զ. 19։
ֆ Ղև. Ժ. 3։
ա բ Թագ. Զ. 7, 8։
բ Հմր 12։ Յես. Գ. 4։

ա բ Օր. Ե. 22։
բ Ղև. ԻԶ. 1, 13։ բ Օր. Ե. 6։ Սաղ. ՁԱ. 10։ Ովս. ԺԳ. 4։
գ Գլ. ԺԳ. 3։

Ն. Ք. Ղ. Ք. 1491

Գ բ Օր. ե. 7 ։ զ. 14 ։ դ Թագ. ժէ. 35 ։ Երեմ. իե. 6 ։ լե. 15 ։
Ե Ղև. իզ. 1 ։ բ Օր. դ. 16 ։ ե. 8 ։ իէ. 15 ։ Սաղ. ղէ. 7 ։
Զ Գլ. իդ. 24 ։ Յես. իդ. 7 ։ բ Թագ. ժէ. 35 ։ Ես. խդ. 15, 19 ։
Է Գլ. լդ. 14 ։ բ Օր. դ. 24 ։ զ. 15 ։ Յես. իդ. 19 ։ Նաւ. ա. 2 ։
Ը Գլ. լդ. 7 ։ Ղև. ի. 5 ։ իզ. 39, 40 ։ Թու. ժդ. 18, 33 ։ գ Թագ. իա. 29 ։ Յոբ. ե. 4 ։ իա. 19 ։ Սաղ. հթ. 8 ։ Ճթ. 4 ։ Ես. ժդ. 20, 21 ։ կե. 6, 7 ։ Երեմ. բ. 9 ։ լբ. 18 ։
Թ Գլ. լդ. 7 ։ բ Օր. է. 9 ։ Սաղ. ձթ. 34 ։ Հռով. ժա. 28 ։
Ժ Գլ. իգ. 1 ։ Ղև. ժթ. 12 ։ բ Օր. ե. 11 ։ Սաղ. ժե. 4 ։ Մատ. ե. 33 ։
Ի Միք. զ. 11 ։
Լ Գլ. լա. 13, 14 ։ Ղև. ժթ. 3, 30 ։ իզ. 2 ։ բ Օր. ե. 12 ։
Խ Գլ. իգ. 12 ։ լա. 15 ։ լդ. 21 ։ Ղև. իգ. 3 ։ Եզեկ. ի. 12 ։ Ղու. ժգ. 14 ։
Ծ Ծն. բ. 2, 3 ։ Գլ. ժզ. 26 ։ լա. 15 ։

3 Կ Իմ առջևս ուրիշ աստուածներ
չունենաս ։
4 Դուն քեզի կուռք չշինես, ոչ ալ
վերը երկինքի մէջ՝ կամ վարը երկրի
վրայ՝ կամ երկրին տակի ջուրե-
րուն մէջ եղած բաներուն մէկ նմա-
5 նութիւնը ։ Անոնց երկրպագու-
թիւն չընես, ու զանոնք չպաշտես ։
ինչու որ ես քու Տէր Աստուածդ՝
նախանձոտ Աստուած եմ որ կը
հատուցանեմ հայրերուն անօրէ-
նութիւնը որդւոցը վրայ՝ մինչև ա-
նոնց երրորդ ու չորրորդ ազգը՝ որ
6 կ'ատեն զիս ։ Եւ կ'ողորմիմ ա-
նոնց մինչև հազար ազգը՝ որ կը
սիրեն զիս ու իմ պատուիրանք-
ներս կը պահեն ։
7 Տէրոջը քու Աստուծոյդ ա-
նունը պարապ տեղը բերանդ չառ-
նես ։ ինչու որ Տէրը՝ իր անունը
պարապ տեղը բերան առնողը՝
անմեղ պիտի չսեպէ ։
8 Հանգստութեան օրը մի՛տքդ
բեր՝ անիկայ սուրբ պահելու հա-
9 մար ։ Վեց օր պիտի աշխատիս,
10 ու բոլոր գործդ ընես ։ Բայց եօթ-
ներորդ օրը՝ Տէրոջը քու Աստուծոյդ
հանգստութեան օրն է ։ Այն օրը գործ
մը պիտի չգործես, ո՛չ դուն՝ ո՛չ քու
որդիդ՝ ո՛չ քու աղջիկդ՝ ո՛չ քու ծա-
ռադ ու աղախինդ՝ ո՛չ քու անա-
սունդ՝ ո՛չ ալ դռներուդ մէջ եղած
11 օտարականդ ։ Քանզի Տէրը վեց
օրուան մէջ ըրաւ երկինքը ու եր-
կիրը՝ ծովը ու բոլոր անոնց մէջ ե-
ղածները, և եօթներորդ օրը հան-
գստացաւ ։ անոր համար Տէրը
օրհնեց հանգստութեան օրը՝ ու
սրբեց զանիկայ ։
12 Պատուէ՛ քու հայրդ ու մայրդ,
որ քու օրերդ երկար ըլլան այն երկ-
րին վրայ՝ որն որ քու Տէր Աս-
տուածդ կու տայ քեզի ։
13 Սպանութիւն մի՛ ըներ ։
14 Շնութիւն մի՛ ըներ ։
15 Գողութիւն մի՛ ըներ ։
16 Քու դրացիիդ դէմ սուտ վկա-
յութիւն մի՛ ըներ ։
17 Քու դրացիիդ տանը մի՛ ցան-
կար ։ քու դրացիիդ կնկանը՝ կամ
անոր ծառային՝ կամ անոր աղա-
խինին՝ կամ անոր եզին՝ կամ անոր
իշուն՝ և քու դրացիիդ ամենևին
մէկ բանին մի՛ ցանկար ։

18 Եւ բոլոր ժողովուրդը կը տես-
նէին որոտումները՝ ու կայծակները՝
և փողին ձայնը՝ ու լեռանը մխալը ։
Եւ երբ ժողովուրդը տեսաւ, ետ
քաշուեցաւ ու հեռու կայնեցաւ ։
19 Եւ ըսին Մովսէսին ։ Դո՛ւն խօսէ
մեզի հետ, ու մտիկ կ'ընենք ։ բայց
Աստուած թող չխօսի՛ մեզի հետ՝
20 որ չմեռնինք ։ Եւ Մովսէս ըսաւ
ժողովուրդին ։ Մի՛ վախնաք ։
ինչու որ Աստուած ձեզ փորձելու
եկաւ ։ Անանկ որ անոր վախը ձեր
21 առջևը ըլլայ, որ չմեղանչէք ։ Եւ
ժողովուրդը հեռու կայնեցաւ ։ ու
Մովսէս մօտեցաւ այն թանձր
խաւարին՝ ուր որ Աստուած էր ։
22 Եւ Տէրը ըսաւ Մովսէսին ։ Ա-
սանկ պիտի ըսես Իսրայէլի որդւո-
ցը ։ Դուք տեսաք որ ձեզի հետ
23 երկինքէն խօսեցայ ։ Ինծի հետ
արծաթ աստուածներ չշինէ՛ք, ո՛չ
ալ ոսկի աստուածներ շինէք ձեզի ։
24 Ինծի հողէ սեղան մը շինես, ու
անոր վրայ քու ողջակէզներդ ու
խաղաղութեան ողջերդ՝ քու ոչ-
խարներդ ու արջառներդ մատու-
ցանես ։ Ամէն տեղ՝ ուր որ իմ
անունս յիշել կու տամ, քեզի
պիտի գամ, ու քեզ պիտի օրհնեմ ։
25 Եւ թէ որ ինծի քարէ սեղան
շինելու ըլլաս, տաշած քարէ
չշինե՛ս ։ քանզի թէ որ անոր վրայ
երկաթ գործիք վերցընես, կը
26 պղծես անիկայ ։ Եւ աստիճաննե-
րով չելլե՛ս իմ սեղանս, որ քու
մերկութիւնդ չբացուի անոր վրայ ։

## ԳԼ. ԻԱ

1 Զանազան կանոններ ծառաներու համար ։ 5 Այն ծառային համար՝ որուն ականջը պիտի ծակուէր ։ 7 Աղախիններու համար ։ 12 Մարդասպանութեան համար ։ 16 Մարդ գողցողի համար ։ 17 Ծնողաց հայհոյութիւն ընողներուն համար ։ 18 Զարնողներուն համար ։ 22 Պատահմամբ եղած վնասի մը համար ։ 28 Զարնող եզի համար ։ 33 Վնասի մը պատճառ եղողին համար ։

1 Եւ անոնց առջևը դնելու դա-
2 տաստաններդ ասոնք են ։ Եթէ
որ Եբրայեցի ծառայ մը ծախու
առնելու ըլլաս, անիկայ վեց տարի
պիտի ծառայէ, և եօթներորդ
3 տարին ձրի ազատ պիտի ելլէ ։ Թէ
որ մինակ մտաւ, մինակ պիտի ել-
լէ ։ Թէ որ կնիկ ունէր, կնիկն ալ
4 իր հետը պիտի ելլէ ։ Թէ որ իր
տէրը իրեն կնիկ տուաւ, ու անի-
կայ իրեն որդիներ կամ աղջիկներ
ծնած է, կնիկը ու անոր տղաքը
տիրոջը պիտի ըլլան, ու ինքը մի-
5 նակ պիտի ելլէ ։ Հապա թէ որ
ծառան յայտնի ըսելու ըլլայ թէ,
Ես կը սիրեմ իմ տէրս՝ իմ կնիկս՝

Ն. Ք. Ղ. Ք. 1491

Երբ. ժբ. 18 ։
Յայտ. ա. 10, 12 ։
Գլ. ժթ. 18 ։
բ Օր. ե. 27 ։ ժը. 16 ։ Գաղ. դ. 19, 20 ։ Եբր. ժբ. 19 ։
բ Օր. ե. 25 ։
ա Թագ. ժբ. 20 ։ Ես. խա. 10, 13 ։
Ծն. իբ. 1 ։ բ Օր. ժդ. 8 ։
բ Օր. դ. 10 ։ զ. 2 ։ ժ. 12 ։ ժէ. 13, 19 ։ ժթ. 20 ։ իը. 58 ։ Առակ. գ. 7 ։ ժզ. 6 ։ Ես. ը. 13 ։
Գլ. ժթ. 16 ։ բ Օր. ե. 5 ։ գ Թագ. ը. 12 ։
բ Օր. դ. 36 ։ Նեեմ. թ. 13 ։
Գլ. լբ. 1, 2, 4 ։ ա Թագ. ե. 4, 5 ։ գ Թագ. ժէ. 33 ։ Եզեկ. ի. 39 ։ Իդ. 8 ։ Դան. ե. 4, 23 ։ Սոփ. ա. 5 ։ բ Կոր. զ. 14, 15, 16 ։
Ղև. ա. 2 ։
բ Օր. ժբ. 5, 11, 21 ։ ժդ. 23 ։ ժզ. 6, 11 ։ իզ. 2 ։ գ Թագ. ը. 43 ։ թ. 3 ։ բ Մն. զ. 6 ։ է. 16 ։ ժբ. 13 ։ Եզր. զ. 12 ։ Նեեմ. ա. 9 ։ Սաղ. հդ. 7 ։ Երեմ. է. 10, 12 ։
Ծն. ժբ. 2 ։ բ Օր. է. 13 ։
բ Օր. իէ. 5 ։ Յես. ը. 31 ։

Գլ. իդ. 3, 4 ։ բ Օր. դ. 14 ։ զ. 1 ։

Մատ. ե. 16, 17, 18, 19 ։ Ծն. բ. 2 ։ Գլ. իդ. 26 ։ Ղև. ժթ. 3 ։ բ Օր. ե. 18 ։ Երեմ. լե. 7, 18, 19 ։ Մատ. ժե. 4 ։ ժթ. 19 ։ Մար. է. 10 ։ ժ. 19 ։ Ղու. ժը. 20 ։ Եփե. զ. 2 ։ բ Օր. ե. 17 ։ Մատ. ե. 21 ։ Հռով. ժգ. 9 ։ բ Օր. ե. 18 ։ Մատ. ե. 27 ։ Ղև. ժթ. 11 ։ բ Օր. ե. 19 ։ Մատ. ժթ. 18 ։ Հռով. ժգ. 9 ։ ա Թես. դ. 6 ։ Գլ. իդ. 1 ։ բ Օր. ե. 20 ։ ժթ. 16 ։ Մատ. ժթ. 18 ։ բ Օր. ե. 21 ։ Միք. բ. 2 ։ Ամբ. բ. 9 ։ Ղու. ժբ. 15 ։ Գոր. ի. 33 ։ Հռով. է. 7 ։ ժգ. 9 ։ Եփե. ե. 3, 5 ։ Եբր. ժգ. 5 ։ Յոբ. լա. 9 ։ Առակ. զ. 29 ։ Երեմ. ե. 8 ։ Մատ. ե. 28 ։

Ղև. իե. 39, 40, 41 ։ բ Օր. ժե. 12 ։ Երեմ. լդ. 14 ։ բ Օր. ժե. 16, 17 ։

Ն . Ք . ԴՖ
1491

[դ] Գլ. ժբ. 12 ; իբ 8 28 ։
[ե] Սաղ. խ. 6 ։
[զ] Նեեմ. ե. 5 ։
[է] Հմր 2 ; 3 ։
[ը] Ա Կոր. է. 5 ։
[թ] Ծն. թ. 6 ; Ղև. իդ. 17 ; Թուոց լե. 30 , 31 ; Մատ. իզ. 52 ։
[ժ] Թուոց. լե. 22 ; Բ Օր. ժթ. 4 , 5 ։
[ի] Ա Թագ. իդ. 4 , 10 , 18 ։
[լ] Թուոց. լե. 11 ; Բ Օր. ժթ. 3 ; Յես. ի. 2 ։
[խ] Թուոց. ժե. 30 ; լե. 20 ; Բ Օր. ժթ. 11 , 12 ; Եբր. ժ. 26 ։
[ծ] Գ Թագ. բ. 28—34 ; Դ Թագ. ժա. 15 ։
[կ] Բ Օր. իդ. 7 ։
[հ] Ծն. լէ. 28 ։
[ձ] Գլ. իբ. 4 ։
[ղ] Ղև. ի. 9 ; Առակ. ի. 20 ; Մատ. ժե. 4 ; Մար. է. 10 ։
[ճ] Բ Թագ. գ. 29 ։
* Եբր. Նստիլը
[մ] Ղև. իե. 45 46 ։

ու իմ տղաքներս , չեմ ուզեր որ
6 ելլեմ և ազատ ըլլամ . Ան ատենը
անոր տէրը [դ]դատաւորներուն պի-
տի տանի զանիկայ , և դրանը՝ կամ
դրանդեւացը մօտեցընէ . ու անոր
տէրը [ե]անոր ականջը հերիւնով պի-
տի ծակէ , և անիկայ յաւիտեան
ծառայ պիտի ըլլայ անոր ։
7 Եւ թէ որ մէկը [զ]իր աղջիկը ա-
ղախին ըլլալու համար ծախէ , ա-
նիկայ [է]ծառաներուն ելլելուն պէս
8 պիտի չելլէ ։ Թէ որ անիկայ հա-
ճելի չերևնայ իր տիրոջը աչքին՝ որ
զանիկայ իրեն նշաներ էր , թող
փրկել տայ զանիկայ . բայց զանի-
կայ օտար ազգի ծախելու կարող
չըլլայ , ինչու որ խաբէութիւն ը-
9 րաւ անոր ։ Եւ թէ որ զանիկայ իր
որդւոյն նշանած է . աղջկանց օ-
րէնքին համեմատ պիտի ընէ անոր ։
10 Թէ որ իրեն ուրիշ կին առնէ , ա-
նոր ուտելիքը՝ հանդերձը [ը]ու մեր-
11 ձաւորութիւնը պիտի չկտրէ ։ Եւ
թէ որ անոր աս իրեք բանը չընէ ,
ան ատենը անիկայ առանց ստակի
ձրի պիտի երթայ ։
12 [թ]Մարդ զարնող մեռցընողը՝ ան-
13 շուշտ պիտի մեռցուի ։ Իսկ [ժ]թէ
որ դարանամուտ չեղաւ , հապա
զանիկայ Աստուած [ի]մատնեց անոր
ձեռքը , [լ]քեզի տեղ մը պիտի սահ-
մանեմ , որ անիկայ հոն փախչի ։
14 Բայց թէ որ մէկը [խ]իր դրացիին ոխ
ունենայ , և զանիկայ նենգութեամբ
մեռցընէ , [ծ]իմ սեղանէս ալ պիտի
15 առնես զանիկայ՝ որ մեռնի ։ Եւ
իր հայրը կամ մայրը զարնողը ան-
շուշտ պիտի մեռցուի ։
16 Եւ մարդ [կ]գողցողը՝ թէ [հ]զանի-
կայ ծախած ըլլայ , և թէ [ձ]իր ձեռ-
քը գտնուի , անշուշտ պիտի մեռ-
ցուի ։
17 Եւ [ղ]իր հայրը կամ մայրը անի-
ծողը՝ անշուշտ պիտի մեռցուի ։
18 Եւ թէ որ մարդիկ իրարու հետ
վէճ ընեն , ու մէկը մէկալին քա-
րով կամ բռունցքով զարնէ , ու
անիկայ չմեռնի , հապա անկողինը
19 պառկի , թէ որ նորէն ելլէ , ու
[ճ]ցուպով պտըտի , զարնողը ան-
պարտ ըլլայ , միայն անոր * կորսըն-
ցուցած ժամանակին վարձքը՝ հա-
տուցանէ , ու բոլորովին առողջա-
ցընէ զանիկայ ։
20 Եւ թէ որ մէկը գաւազանով իր
ծառան՝ կամ իր աղախինը զարնէ ,
ու անիկայ իր ձեռքին տակը մեռ-
նի , անշուշտ անկէ վրէժ պիտի
21 առնուի . Բայց թէ որ օր մը կամ
երկու օր ապրի , անկէ վրէժ չառ-
նուի . ինչու որ [մ]անիկայ իր ստակն
է ։
22 Եւ թէ որ մարդիկ կռուին , ու
յղի կնկան մը զարնելով՝ անոր տը-
ղան անցընել տան , և ուրիշ վնաս
մը չըլլայ , անիկայ անշուշտ ան
կնիկին էրկանը իր վրայ դրած
տոյժը պիտի քաշէ , [յ]դատաւորնե-
րուն դատաստանին պէս հատուցա-
23 նելով ։ Բայց թէ որ վնաս մը
ըլլայ , անձի տեղ՝ անձ պիտի տաս ,
24 [ն]Աչքի տեղ՝ աչք , ակռայի տեղ՝
ակռայ , ձեռքի տեղ՝ ձեռք , ոտքի
25 տեղ՝ ոտք , Խարանի տեղ՝ խարան ,
վէրքի տեղ՝ վէրք , հարուածի
տեղ՝ հարուած ։
26 Եւ թէ որ մէկը իր ծառային
աչքը կամ իր աղախնին աչքը
զարնէ ու կուրցընէ , զանիկայ իր
աչքին փոխարէն ազատ պիտի ար-
27 ձակէ ։ Եւ թէ որ իր ծառային ակ-
ռան՝ կամ իր աղախինին ակռան
թափէ , զանիկայ իր ակռային
փոխարէն ազատ պիտի արձակէ ։
28 Եւ թէ որ եզ մը իր եղջիւրովը
մարդ մը կամ կնիկ մը զարնէ մեռ-
ցընէ , [շ]եզը անշուշտ պիտի քար-
կոծուի ու անոր միսը պիտի չու-
տուի . բայց եզին տէրը անպարտ
29 ըլլայ ։ Հապա թէ որ եզը երէկուը-
նէ կամ մէկալ օրուընէ զարնող է , և
անոր տիրոջն ալ զրուցուած է , ու
զանիկայ պահած չէ , թէ որ մարդ
մը կամ կնիկ մը մեռցընելու ըլլայ ,
եզը պիտի քարկոծուի , ու անոր
30 տէրն ալ պիտի մեռցուի ։ Թէ որ
փրկանք մը ձգուի անոր վրայ ; ա-
նիկայ [ո]իր անձին ազատութեանը
համար՝ ինչ որ իր վրան ձգուի՝ պի-
31 տի վճարէ ։ Թէ տղայ մը՝ և թէ
աղջիկ մը զարնելու ըլլայ նէ , աս
դատաստանին պէս ըլլայ անոր ։
32 Թէ որ եզը ծառայ մը կամ աղա-
խին մը զարնէ , անոնց տիրոջը
[չ]երսուն սիկղ արծաթ պիտի տայ ,
ու [պ]եզը պիտի քարկոծուի ։
33 Եւ թէ որ մէկը փոս մը բանայ ,
կամ մէկը փոս մը փորէ՝ ու չծած-
կէ , և հոն եզ մը կամ էշ մը իյ-
34 նալու ըլլայ , Վնասը փոսին տէրը
պիտի քաշէ , ու անոնց տիրոջը
ստակ պիտի տայ , և մեռածը իրը
պիտի ըլլայ ։
35 Եւ թէ որ մէկու մը եզը իր դրա-
ցիին եզը զարնէ մեռցընէ , ողջ եզը
պիտի ծախեն , ու անոր ստակը
բաժնեն , և մեռածն ալ բաժնեն ։
36 Հապա թէ որ եզին երէկուընէ կամ
մէկալ օրուընէ զարնող ըլլալը
գիտցուած ըլլալով , անոր տէրը
զանիկայ պահած չէ , անշուշտ ե-
զին տեղը եզ պիտի հատուցանէ ,
ու մեռածը իրը պիտի ըլլայ ։

ԳԼ . ԻԲ

1 Գողութեան վրայով ։ 5 Աւերացուածքի վնա-
սին վրայով ։ 14 Փոխ առնելու վրայով ։ 16

Ն . Ք . ԴՖ .
1491

[յ] Հմր . 30 ; Բ Օր . իբ . 18 , 19 ։
[ն] Ղև . իդ . 20 ; Բ Օր . ժթ . 21 ; Մատ . ե . 38 ։
[շ] Ծն . թ . 5 ։
[ո] Հմր 22 ; Թուոց . լե . 31 ։
[չ] Տես Զաք . ժա . 12 , 13 ; Մատ . իզ . 15 ; Փիլ . բ . 7 ։
[պ] Հմր 28

Ն. Ք. ԴՃ. 1491

Գռնկութեան վրայով ։ 18 Հմայութեան վրայով ։ 19 Անասնոց հետ պղծութեան վրայով ։ 20 Կռապաշտութեան վրայով ։ 21 Օտարներուն՝ որբևարիներուն և որբերուն վրայով ։ 25 Դրամը վարձքի տալու վրայով ։ 26 Գրաւներու վրայով ։ 28 Իշխանները պատուելու վրայով ։ 29 Երախայրիներու վրայով ։

1 Թէ որ մէկը արջառ մը կամ ոչխար մը գողնայ՝ ու մորթէ կամ ծախէ զանիկայ, մէկ արջառին տեղը հինգ արջառ՝ ու մէկ ոչխարին տեղը բչորս ոչխար պիտի հատուցա-
2 նէ ։ Թէ որ գող մը ծակելու վրայ գտնուի, ու զարնուի մեռնի, գանոր համար արիւն չը-
3 թափուի ։ Թէ որ անոր վրայ արևը ծագեր է, անոր համար արիւն պիտի թափուի ․ անիկայ լման կրնար հատուցանել ․ թէ որ բան մըն ալ չունենար, ան ատենը իր գողցած բանին համար դկրնար ծա-
4 խուիլ ։ Թէ որ գողցածը եիր ձեռքը ողջ գտնուի, թէ եզ ըլլայ՝ թէ էշ և թէ ոչխար, զկրկինը պիտի հատուցանէ ։
5 Թէ որ մէկը արտի մը կամ այգիի մը *վնաս տայ", թող տալով իր անասունը ուրիշի մը արտին մէջ արածելու, իր արտին ամենէն աղէկ արդիւնքէն՝ ու իր այգիին ամենէն աղէկ բերքէն պիտի հատուցանէ ։
6 Թէ որ կրակ ցաթկէ՝ ու ցանկեր փուշերուն փակչի, և դիզուած որաները՝ կամ չհնձուած ցորենը՝ կամ արտը այրի, կրակը վառողը այրածին արժէքը լման պիտի հատուցանէ ։
7 Թէ որ մէկը իր դրացիին ստակ կամ ամաններ տայ պահելու համար, և ան մարդուն տունէն գողցուի, ըթէ որ գողը գտնուի, անիկայ կրկինը պիտի հատուցանէ ․
8 Թէ որ գողը չգտնուի, տանուտէրը ըդատաւորներուն պիտի տարուի, իր ձեռքը իր դրացիին ստացուածքին չդպցընելը երդուելու համար ։
9 Ամէն կերպ անիրաւութեան համար, թէ եզի՝ թէ իշու՝ թէ ոչխարի՝ և թէ հանդերձի համար, կամ ամէն կերպ կորսուած բանի համար՝ որն որ մէկը կը հաստատէ թէ իրն է, ըերկու կողմին դատը դատաւորներուն առջին տարուի, ու դատաւորները որու վրայ վճռելու ըլլան, անիկայ իր դրացիին կրկինը պիտի հատուցանէ ։
10 Թէ որ մէկը իր դրացիին էշ մը՝ կամ եզ մը՝ կամ ոչխար մը՝ կամ ինչ և իցէ անասուն մը պահելու համար տայ, ու անիկայ մեռնի՝ կամ վնասի՝ կամ † թշնամին առնէ
11 տանի" ու տեսնող մը չըլլայ, Ան երդումը երկուքին մէջտեղը ժՏէրոջը երդումը ըլլայ՝ իր դրացիին ստացուածքին ձեռք չդպցընելուն համար ․ ու անոր տէրը պիտի ընդունի երդումը, և ինքը պիտի չհատուցա-
12 նէ ։ Եւ ւթէ որ իրաւցընէ իր քովէն գողցուեր է, ինքը անոր տիրո-
13 ջը պիտի հատուցանէ ։ Թէ որ գազանէ փառատուած է, թող բերէ անիկայ՝ վկայութիւն ըլլալու համար ․ ու փառատուածին գինը պիտի չհատուցանէ ։
14 Եւ թէ որ մէկը իր դրացիէն անասուն փոխ առնէ, ու անիկայ վնասուելու կամ մեռնելու ըլլայ՝ անոր տէրը հետը չըլլալով, ինքը ան-
15 շուշտ պիտի հատուցանէ ․ Բայց թէ որ անոր տէրը հետն էր, պիտի չըհատուցանէ ․ թէ որ վարձքով առնուած էր, վարձքին տեղը սեպուի ։
16 Եւ ւթէ որ մէկը չնշանուած աղջիկ մը խաբէ, ու անոր հետ պառկի, անշուշտ անոր օժիտը ինքը տալով՝ զանիկայ իրեն կնիկ պիտի
17 ընէ ։ Թէ որ անոր հայրը ամենևին չուզէ անոր տալ, անիկայ կոյսերուն եօժիտին չափ ստակ պիտի ‡տայ ։
18 ծԿախարդ կնիկը պիտի չապրեցընես ։
19 ՚Ո՛վ որ անասունի հետ պառկի, անշուշտ պիտի մեռցուի ։
20 հՄիայն Տէրոջմէն 'ի զատ՝ ուրիշ աստուածներու զոհ ընողը բոլորովին պիտի կորսուի ։
21 յԵւ օտարականը մի՛ չարչարեր, ու զանիկայ մի՛ նեղեր ․ ինչու որ դուք ալ Եգիպտոսի երկրին մէջ
22 օտարական էիք ։ ՚Որբևարին ու
23 որբը մի՛ չարչարէք ։ Թէ որ զանոնք չարչարէք ինչ և իցէ կերպով մը, ու անոնք ՟ինծի բողոքելու ըլլան, անշուշտ ՟պիտի լսեմ անոնց
24 աղաղակը ․ Եւ իմ ՟բարկութիւնս պիտի բորբոքի, ու ձեզ սրով պիտի մեռցընեմ ․ և ՟ձեր կնիկները որբևարի՝ ու ձեր տղաքները որբ պիտի ըլլան ։
25 ՟Թէ որ իմ ժողովուրդէս քու քովդ եղած աղքատ մէկու մը փոխ ստակ տաս, վաշխառուի մը պէս մի ըլլար անոր, ու անոր վրան
26 վաշխ մի՛ դներ ։ ՟Թէ որ քու դրացիիդ հանդերձը գրաւ առնես, արևը մարը չմտած՝ իրեն ետ դարձը-
27 նես ․ Ինչու որ ան է միայն անոր ծածկոցը, իր մարմնին հանդերձն է ան ․ ինչո՞վ պիտի պառկի ․ և պիտի ըլլայ որ ՟երբոր ինծի աղաղակէ, պիտի լսեմ, քանզի ես ՟ողորմած եմ ։
28 ՟Դատաւորները մի՛ հայհոյեր, և

Ն. Ք. ԴՃ. 1491

ա Բ Թագ. ԺԲ. 6: Ղուկ. ԺԹ. 8: Տես Առակ. Զ. 31:
բ Մատ. ԻԴ. 43:
գ Թուոց. ԼԵ. 27:
դ Գլ. ԻԱ. 2:
ե Գլ. ԻԱ. 16:
զ Տես Հմր 1, 7: Առակ. Զ. 31:
* Եբր. մէջ արածել տայ:
ե Հմր 4:
է Գլ. ԻԱ. 6: Հմր 28:
ը Բ Օր. ԻԵ. 1: Բ Մն. ԺԹ. 10:
† Եբր. գերութեան քշուի՝
ժ Եբր. Զ. 16:

է Ծն. ԼԱ. 39:
ւ Բ Օր. ԻԲ. 28, 29:
ի Ծն. ԼԴ. 12: Բ Օր. ԻԲ. 29: Ա Թագ. ԺԸ. 25:
‡ Եբր. կշռէ:
ծ Ղև. ԺԹ. 26, 31: Ի. 27: Բ Օր. ԺԸ. 10, 11: Ա Թագ. ԻԸ. 3, 9:
կ Ղև. ԺԸ. 23: Ի. 15:
հ Թուոց. ԻԵ. 2, 7, 8: Բ Օր. ԺԳ 1, 2, 5, 6, 9, 13, 14, 15: ԺԷ. 2, 3, 5:
յ Գլ. ԻԳ. 9: Ղև. ԺԹ. 33: ԻԵ. 35: Բ Օր. Ժ. 19: Երեմ. Է. 6: Զաք. Է. 10: Մաղ. Գ. 5:
ն Բ Օր. Ժ. 18: ԻԴ. 17: ԻԷ. 19: Սաղ. ՂԴ. 6: Եսա. Ա. 17, 23: Ժ. 2: Եզեկ. ԻԲ. 7: Զաք. Է. 10: Յակ. Ա. 27:
շ Բ Օր. ԺԵ. 9: ԻԴ. 15: Յոբ. ԼԵ. 9: Ղուկ. ԺԸ. 7:
ո Յոբ. ԼԴ. 28: Սաղ. ԺԸ. 6: Ծխե. 19: Յակ. Ե. 4:
չ Յոբ. ԼԱ. 23: Սաղ. ԿԹ. 24:
պ Սաղ. ՃԹ. 9: Ողբ. Ե. 3:
ջ Ղև. ԻԵ. 35, 36, 37: Բ Օր. ԻԳ. 19, 20: Նեեմ. Ե. 7: Սաղ. ԺԵ. 5: Եզեկ. ԺԸ. 8, 17:
ռ Բ Օր. ԻԴ. 6, 10, 13, 17: Յոբ. ԻԲ. 6: ԻԴ. 3, 9: Առակ. Ի. 16: ԻԲ. 27: Եզեկ. ԺԸ. 7, 16: Ամով. Բ. 8:
ս Հմր 23:
վ Գլ. ԼԴ. 6: Բ Մն. Լ. 9: Սաղ. ՁԶ. 15:
տ Ժող. Ժ. 20: Գործ. ԻԳ. 5: Յուդ. 8:

Ն. Ք. ՂՖ.
1491

ա Գլ. իդ. 16, 19 ։ Առակ. գ. 9 ։
բ Գլ. ժգ. 2, 12 ։ լդ. 19 ։
Լ Բ Օր. ժե. 19 ։
դ Ղև. իբ. 27 ։
ե Գլ. ժթ. 6 ։ Ղև. ժթ. 2 ։ Բ Օր. ժդ. 21 ։
զ Ղև. իբ. 8 ։ Եզեկ. դ. 14 ։ խդ. 31 ։

քու ժողովուրդիդ իշխանը՝ մի՛ անիծեր ։
29 Քու արմտիքներուդ ու հեղանիւթներուդ աերախայրիները մի՛
ուշացըներ . քու որդւոցդ բանդ-
30 րանիկները ինծի պիտի տաս ։ Լ Քու
եզիդ ու ոչխարիդ ալ ասանկ պիտի
ընես . դեօթը օր մօրը հետ պիտի
ըլլայ . ութերորդ օրը՝ ան ինծի
պիտի տաս ։
31 Եւ դուք ինծի ե սուրբ մարդիկ
պիտի ըլլաք . և զդաշտին մէջ գազաններէն փառատուածին միսը պիտի չուտէք . շուներուն պիտի նետէք ան ։

ԳԼ. ԻԳ

1 Յամբաստանաց և սուտ վկայութեան վրայով ։ 3. 6 Արդար դատաստանի վրայով ։ 4 Թշնամին սիրելու վրայով ։ 10 Հանգստութեան տարւոյն վրայով ։ 12 Շաբաթին վրայով ։ 14 Իրեք տօնախմբութիւններուն վրայով ։ 18 Զոհերուն արիւնին ու ճարպին վրայով ։ 20 Տէրը կը խոստանայ անոնց հետ հրեշտակ մը ղրկել, ու զանոնք օրհնել, թէ որ իրեն հնազանդին ։

ա Հմր 7 ։ Ղև. ժթ. 16 ։ Սաղ. ժե. 3 ։ Ճա. 5 ։ Առակ. ժ. 18 ։ Տեսբ Թագ. ժթ. 27 ։ ժզ. 3 ։
բ Գլ. ի. 16 ։ Բ Օր. ժթ. 16, 17, 18 ։ Սաղ. լե. 11 ։ Առակ. ժթ. 5, 9, 28 ։ իդ. 28 ։ Տեսգ Թագ. իա. 10, 13 ։ Մատ. իզ. 59, 60, 61 ։ Գոր. զ. 11, 13 ։
գ Ծնն. է. 1 ։ ժթ. 4, 7 ։ Գլ. լբ. 1, 2 ։ Յես. իդ. 15 ։ ա Թագ. ժե. 9 ։ գ Թագ. ժթ. 10 ։ Յոբ. լա. 34 ։ Առակ. ա. 10, 11, 15 ։ դ. 14 ։ Մատ. իէ. 24, 26 ։ Մար. ժե. 15 ։ Ղու. իդ. 23 ։ Գոր. իդ. 27 ։ իե. 9 ։
ե Հմր 6, 7 ։ Ղև. ժթ. 15 ։ Բ Օր. ա. 17 ։ Սաղ. հբ. 2 ։
է Բ Օր. իբ. 1 ։ Յոբ. լա. 29 ։ Առակ.

1 Սուտ լուր. պիտի չտարածես .
անօրէնի հետ ձեռքդ պիտի
չդնես բանիրաւ վկայ ըլլալով ։
2 գ Չարութիւն ընելու համար՝ բազմութեանը պիտի չհետևիս . ու
դատաստանի մէջ իրաւունքը ծըռելու համար շատերուն ետևէն
խոտորելով՝ խօսք պիտի չխօսիս ։
3 Եւ աղքատին աչառութիւն պիտի
չընես իր դատին մէջ ։
4 Եթէ որ քու թշնամիիդ մոլորուած եզին կամ իշուն հանդիպելու ըլլաս, անշուշտ իրեն պիտի
5 դարձընես անիկայ ։ Եթէ որ քեզ
ատողին՝ էշը բեռի տակ ինկած
տեսնես, ու զանիկայ ազատելէն
հրաժարիլ ալ ուզես, անշուշտ անոր հետ պիտի ազատես ։
6 Քու աղքատիդ դատին մէջ անոր իրաւունքը պիտի չծռես ։
7 է Սուտ խօսքէն հեռու կեցիր՝ . և
անմեղը ու արդարը մի՛ մեռցըներ .
ինչու որ ես չարը պիտի չարդարացընեմ ։
8 Եւ կաշառ պիտի չառնես . ինչու որ կաշառը աչքը բաց մարդիկը
կը կուրացընէ, և արդարներուն
*խօսքերը կը խանգարէ ։
9 Եւ օտարականը մի՛ նեղեր . ինչու որ դուք օտարականին սիրտը
գիտէք . որովհետև դուք ալ Եգիպտոսի երկրին մէջ օտարական
էիք ։
10 Եւ քու երկիրդ վեց տարի պիտի
սերմանես, ու անոր արդիւնքը ժող-
11 վես . Բայց եօթներորդ տարին անգործ ձգես ու թողուս զան, որ քու
ժողովուրդիդ աղքատները ուտեն,
և անոնցմէ մնացածը դաշտին անասունները ուտեն . քու այգիիդ ու
ձիթաստանիդ ալ ասանկ պիտի ը-
12 նես ։ Վեց օր քու գործդ գործէ,
ու եօթներորդ օրը հանգստացիր .
որ քու եզդ ու էշդ հանգստանայ,
և քու աղախինիդ որդին ու օտա-
13 րականը շունչ առնէ ։ Եւ բոլոր
ձեզի զրուցածներուս զգուշութիւն
պիտի ընէք, և ուրիշ աստուածներուն անունը պիտի չյիշէք . քու
բերնէդ անգամ չլսուի ։
14 Տարին իրեք անգամ ինծի տօն
15 պահէ ։ Բաղարջակերաց տօնը
պահէ . քեզի պատուիրածիս պէս
եօթը օր անխմոր հաց պիտի ուտես
Աբիբ ամսուն մէջ սահմանուած
ժամանակին . ինչու որ ան ամսուն
մէջ Եգիպտոսէն ելար . և բնաւ
մէկը իմ առջևս պարապ չերևնայ իմ
16 առջևս . Եւ արտին մէջ ցանելու աշխատութեանդ երախայրի
պտուղը հնձելու տօնը՝ ու տարւոյն վերջը ժողվելու տօնը պիտի
պահես, երբոր արտէն քու աշխա-
17 տութիւնդ կը ժողվես ։ Տարին
իրեք անգամ քու ամէն արուներդ
Տէր Եհովային առջևը պիտի երևնան ։
18 Իմ զոհիս արիւնը խմորեալ
հացով պիտի չմատուցանես, ու
իմ տօնիս ճարպը մինչև առտու
19 պիտի չմնայ ։ Քու երկրիդ առջի
երախայրիները քու Տէր Աստուծոյդ տունը պիտի տանիս ։
Ուլը իր մօրը կաթին մէջ պիտի
չեփես ։
20 Ահա քու առջևէդ հրեշտակ մը
կը ղրկեմ, որ քեզ ճամբուն մէջ
պահպանէ, ու իմ պատրաստած
21 տեղս տանի քեզ ։ Անկէ զգուշացիր, ու անոր խօսքը մտիկ ըրէ,
անոր անձնազանդ մի՛ ըլլար . ինչու որ անիկայ ձեր յանցանքը
պիտի չներէ, քանզի իմ անունս
22 անոր վրայ է ։ Բայց թէ որ ուշադրութեամբ անոր խօսքը մըտիկ ընես, ու իմ բոլոր ըսածս ընես, ան ատենը քու թշնամիներուդ թշնամի պիտի ըլլամ, և
քու հակառակորդներուդ՝ հակա-
23 ռակորդ ։ Քանզի իմ հրեշտակս

Ն. Ք. ՂՖ.
1491

ե Ղև. իե. 3, 4 ։
ծ Գլ. ի. 8, 9 ։ Բ Օր. ե. 13 ։ Ղու. ժգ. 14 ։
կ Բ Օր. դ. 9 ։ Յես. իբ. 5 ։ Սաղ. լթ. 1 ։ Եփե. ե. 15 ։ ա Տիմ. դ. 16 ։
հ Թուե. լբ. 38 ։ Բ Օր. ժբ. 3 ։ Յես. իգ. 7 ։ Սաղ. ժզ. 4 ։ Ովս. բ. 17 ։ Զաք. ժգ. 2 ։
ձ Գլ. լդ. 23 ։ Ղև. իգ. 4 ։ Բ Օր. ժզ. 16 ։
ղ Գլ. ժբ. 15 ։ ժգ. 6 ։ լդ. 18 ։ Ղև. իգ. 6 ։ Բ Օր. ժզ. 8 ։
ճ Գլ. լդ. 20 ։ Բ Օր. ժզ. 16 ։
մ Գլ. լդ. 22 ։ Ղև. իգ. 10 ։
յ Բ Օր. ժզ. 13 ։
ն Գլ. լդ. 23 ։ Բ Օր. ժզ. 16 ։
շ Գլ. ժբ. 8 ։ լդ. 25 ։ Ղև. բ. 11 ։ Բ Օր. ժզ. 4 ։
ո Գլ. իբ. 29 ։ լդ. 26 ։ Ղև. իգ. 10, 17 ։ Թուե. ժը. 12, 13 ։ Բ Օր. իզ. 10 ։ Նեեմ. ժ. 35 ։
չ Գլ. լդ. 26 ։ Բ Օր. ժդ. 21 ։
պ Գլ. ժդ. 19 ։ լբ. 34 ։ լդ. 2, 14 ։ Թուե. ի. 16 ։ Յես. ե. 13 ։ զ. 2 ։ Սաղ. ղա. 11 ։ Ես. կգ. 9 ։
ջ Թուե. ժդ. 11 ։ Սաղ. հը. 40, 56 ։ Եփե. դ. 30 ։ Եբր. գ. 10, 16 ։
ռ Գլ. լբ. 34 ։ Թուե. ժդ. 35 ։ Բ Օր. ժը. 19 ։ Յես. իդ. 19 ։ Երեմ. ե. 7 ։ Եբր. գ. 11 ։ ա Յովհ. ե. 16 ։

իդ. 17 ։ իե. 21 ։ Մատ. ե. 44 ։ Հռով. ժբ. 20 ։ ա Թես. ե. 15 ։ Ղ Բ Օր. իբ. 4 ։ ե Հմր 2 ։ Բ Օր. իէ. 19 ։ Յոբ. լա. 13, 21 ։ Ժող. ե. 8 ։ Ես. ժ. 1, 2 ։ Երեմ. ե. 28 ։ է. 6 ։ Ամով. ե. 12 ։ Մաղ. գ. 5 ։ ը Հմր 1 ։ Ղև. ժթ. 11 ։ Ղու. գ. 14 ։ Եփե. դ. 25 ։ Բ Բ Օր. իէ. 25 ։ Սաղ. ղդ. 21 ։ Առակ. ժէ. 15, 26 ։ Երեմ. է. 6 ։ Մատ. իէ. 4 ։ ծ Գլ. լդ. 7 ։ Հռով. ա. 18 ։ Ի Բ Օր. ժզ. 19 ։ ա Թագ. ը. 3 ։ ժբ. 3 ։ բ Մն. ժթ. 7 ։ Սաղ. իզ. 10 ։ Առակ. ժե. 27 ։ ժէ. 8, 23 ։ իթ. 4 ։ Ես. ա. 23 ։ ե. 23 ։ լդ. 15 ։ Եզեկ. իբ. 12 ։ Ամով. ե. 12 ։ Գոր. իդ. 26 ։ * Կամ դատերը
ե Գլ. իբ. 21 ։ Բ Օր. ժ. 19 ։ իդ. 14, 17 ։ իէ. 19 ։ Սաղ. ղդ. 6 ։ Եզեկ. իբ. 7 ։ Մաղ. գ. 5 ։

ա Ես. թ. 6 ։ Երեմ. իդ. 6 ։ Յօհ. ժ. 30, 38 ։ 3 ։ Բ Օր. լ. 7 ։ Երեմ. լ. 20 ։ ւ Հմր 20 ։ Գլ. լդ. 2 ։
Լ Ծն. ժբ.

Ն . Ք . ԳՔ .
1491

ք Ցես . իդ . 8, 11 ։
յ Գլ . ի . 5 ։
ա Ղև . ժը . 3 ։ բ Օր . ժբ . 30, 31 ։
է Գլ . լդ . 13 ։ Թուե . լգ . 52 ։ բ Օր . է . 5, 25 ։ ժբ . 3 ։
բ Օր . զ . 13 ։ ժ . 12, 20 ։ ժա . 13, 14 ։ ժգ . 4 ։ Յես . իբ . 5 ։ իդ . 14, 15, 21, 24 ։ ա Թագ . է . 3 ։ ժբ . 20, 24 ։ Մատ . դ . 10 ։
բ Օր . է . 13 ։ իը . 5, 8 ։
Գլ . ժե . 26 ։ բ Օր . է . 15 ։
բ Օր . է . 14 ։ իը . 4 ։ Յոբ . իա . 10 ։ Մաղ . գ . 10, 11 ։
Ծն . իե . 8 ։ լե . 29 ։ ա Մն . իգ . 1 ։ Յոբ . ե . 26 ։ իբ . 17 ։ Սաղ . ծէ . 23 ։ զ . 10 ։
Ծն . լե . 5 ։ Գլ . ժե . 14, 16 ։ բ Օր . բ . 25 ։ ժա . 25 ։ Յես . բ . 9, 11 ։ ա Թագ . ժգ . 15 ։ բ Մն . ժգ . 14 ։
բ Օր . է . 23 ։
Սաղ . ժբ . 40 ։
բ Օր . է . 20 ։ Յես . իդ . 12 ։
բ Օր . է . 22 ։
Ծն . ժե . 18 ։ Թուե . լդ . 3 ։ բ Օր . ժա . 24 ։ Յես . ա . 4 ։ գ Թագ . դ . 21, 24 ։ Սաղ . հբ . 8 ։
Յես . իա . 44 ։ Դատ . ա . 4 ։ ժա . 21 ։
Գլ . լդ . 12, 15 ։ բ Օր . է . 2 ։
Գլ . լգ . 12 ։ բ Օր . է . 16 ։ ժբ . 30 ։ Յես . իգ . 13 ։ Դատ . բ . 3 ։ ա Թագ . ժբ . 21 ։ Սաղ . ճղ . 36 ։ ——
Գլ . իշ . 1 ։ Ղև . ժ . 1, 2 ։ Գլ . ա . 5 ։ Թուե . ժա . 16 ։

քու առջևէդ պիտի երթայ , և
քեզ Ամօրհացւոց՝ ու Քետացւոց՝
և Փերեզացւոց ու Քանանացւոց՝
Խևացւոց՝ ու Յեբուսացւոց պիտի
տանի , և ես պիտի ջարդեմ զա-
24 նոնք ։ Անոնց աստուածներուն
երկրպագութիւն կամ ծառա-
յութիւն պիտի չընես , ու անոնց
ըրածին պէս պիտի չընես . հապա
բոլորովին պիտի կործանես զա-
նոնք , ու անոնց կուռքերը բոլո-
25 րովին կոտրտես ։ Եւ ձեր Տէր Աս-
տուածը պիտի պաշտէք , ու ինքը
քու հացդ ու ջուրդ պիտի օրհնէ .
և քու մէջէդ հիւանդութիւնը
26 պիտի վերցընեմ ։ Քու երկրիդ
մէջ վիժող ու ամուլ պիտի չըլ-
լայ . քու օրերուդ թիւը պիտի
27 լեցընեմ ։ Իմ երկիւղս քու առ-
ջևէդ պիտի խրկեմ , և պիտի
կորսընցընեմ ան բոլոր ժողովուր-
դը՝ որուն որ դուն կ'երթաս , ու
քու բոլոր թշնամիներուդ կռնա-
28 կը քեզի պիտի դարձընեմ ։ Եւ
քու առջևէդ իշամեղուն պիտի
խրկեմ , որ Խևացիները՝ Քանանա-
ցիները ու Քետացիները քու առ-
29 ջևէդ վռընտէ ։ Անոնք քու առ-
ջևէդ մէկ տարուան մէջ պիտի չը-
վռընտեմ , որ չըլլայ թէ երկիրը
ամայի ըլլայ , ու քու վրադ դաշտին
30 գազանները շատնան ։ Անոնք քու
առջևէդ կամաց կամաց պիտի վը-
ռընտեմ , մինչև որ դուն բազմա-
31 նաս ու երկիրը ժառանգես ։ Եւ
քու սահմաններդ Կարմիր ծովէն
մինչև Փղշտացւոց ծովը՝ ու անա-
պատէն մինչև Եփրատ գետը պիտի
դնեմ . ինչու որ այն երկրին բնա-
կիչները ձեր ձեռքը պիտի տամ .
ու զանոնք քու առջևէդ պիտի
32 վռընտես ։ Անոնց հետ ու անոնց
աստուածներուն հետ ուխտ պիտի
33 չընես ։ Քու երկրիդ մէջ պիտի
չբնակին , որ քեզի մեղք գործել
չտան ինծի դէմ . ինչու որ եթէ
անոնց աստուածները պաշտես ,
անշուշտ ան քեզի որոգայթ պիտի
ըլլայ ։

## ԳԼ . ԻԴ

1 Մովսէս լեռան վրայ ելլելու կը կանչուի ։ 3 Ժողովուրդը հնազանդ ըլլալու խօսք կու տայ ։ 4 Մովսէս սեղան մը կը շինէ , ու տասուերկու արձան կը կանգնեցընէ . 6 զոհերուն արիւնը կը սրսկէ ։ 9 Աստուծոյ փառքը կը յայտնուի ։ 14 Ժողովուրդին կառավարութիւնը Ահարոնին ու Ովրին կը յանձնուի ։ 15 Մովսէս լեռը ելլելով՝ հոն կը մնայ քառասուն օր ու քառասուն գիշեր ։

1 Եւ ըսաւ Մովսէսին . Տէրոջը ելի՛ր
դուն ու Ահարոնը՝ Նադաբ ու
Աբիուդը՝ և Իսրայէլի ծերերէն
եօթանասուն հոգի , ու հեռուէն
2 երկրպագութիւն ըրէք ։ Եւ մի-
այն Մովսէսը մօտենայ Տէրոջը , ու
անոնք չմօտենան , ո՛չ ալ ժողո-
վուրդը անոր հետ ելլէ ։
3 Եւ Մովսէս եկաւ , ու Տէրոջը
բոլոր խօսքերը և բոլոր դատաս-
տանները պատմեց ժողովուրդին .
և բոլոր ժողովուրդը միաձայն պա-
տասխան տուեր ու ըսին . Տէրոջը
ըրուցած բոլոր խօսքերը պիտի ը-
4 նենք ։ Եւ Մովսէս Տէրոջը բոլոր
խօսքերը գրեց , ու առտուանց կա-
նուխ ելաւ , ու լեռանը տակը սե-
ղան մը շինեց . ու Իսրայէլին տա-
սուերկու ցեղերուն համեմատ տա-
5 սուերկու արձան կանգնեց ։ Եւ
Իսրայէլի որդւոցմէ պատանիներ
խրկեց , ու ողջակէզներ մատուցին
և խաղաղութեան զոհերու համար
6 զուարակներ զոհեցին Տէրոջը ։ Եւ
Մովսէս արիւնին կէսը առաւ , ու
կոնքերու մէջ դրաւ . և արիւնին
7 կէսը սեղանին վրայ սրսկեց ։ Եւ
առաւ ուխտին գիրքը՝ ու ժողո-
վուրդին ականջներուն կարդաց .
և անոնք ըսին . Տէրոջը բոլոր ը-
սածը պիտի ընենք , ու անոր պիտի
8 հնազանդինք ։ Եւ Մովսէս առաւ
արիւնը , ու ժողովուրդին վրայ
սրսկեց , ու ըսաւ . Ահա՛ բոլոր աս
խօսքերուն համեմատ՝ Տէրոջը ձե-
զի հետ ըրած ուխտին արիւնը ։
9 Ան ատենը Մովսէս ու Ահարոն՝
Նադաբ ու Աբիուդ՝ և Իսրայէլի ծե-
10 րերէն եօթանասուն հոգի ելան . Եւ
Իսրայէլի Աստուածը տեսան . ու
անոր ոտքերուն տակը աղիւսով յա-
տակածի պէս շափիւղայ՝ և պայ-
ծառութեամբ բուն երկինքին
11 պէս էր ։ Եւ Իսրայէլի որդւոցը
ընտրեալներուն վրայ իր ձեռքը
չերկընցուց . և զԱստուած տե-
սան , ու կերան և խմեցին ։
12 Եւ Տէրը ըսաւ Մովսէսին . Լե՛-
ռը ելի՛ր ինծի , ու հոն կեցի՛ր , և
պիտի տամ քեզի քարեղէն տախ-
տակները ու իմ գրած օրէնքս և
պատուիրանքները՝ որ անոնց սոր-
13 վեցընես ։ Եւ Մովսէս ու անոր
պաշտօնեան Յեսուն ելան , և Մով-
14 սէս Աստուծոյ լեռը ելաւ . Եւ ը-
սաւ ծերերուն . Դուք հոս մեզի
սպասեցէ՛ք , մինչև որ ձեզի դառ-
նանք . և ահա՛ Ահարոնը ու Ովրը
ձեր հետն են . թէ որ մէկը դատ մը
ունենայ՝ թող անոնց երթայ ։
15 Եւ Մովսէս լեռը ելաւ , ու ամ-
16 պը պատեց լեռը ։ Եւ Տէրոջը
փառքը Սինայ լեռանը վրայ հանգ-
չեցաւ , ու ամպը պատեց զանիկայ
վեց օր . և եօթներորդ օրը Տէրը
ամպին մէջէն կանչեց Մովսէսը ։

Ն . Ք . ԳՔ .
1491

Հմր 13, 15, 18 ։
Հմր 7 ։ Գլ . ժթ . 8 ։ բ Օր . ե . 27 ։ Գաղ . գ . 19, 20 ։
բ Օր . լա . 9 ։
Ծն . իը . 18 ։ լա . 45 ։
Եբր . թ . 18 ։
Եբր . թ . 19 ։
Հմր 3 ։
Եբր . թ . 20 ։ ժգ . 20 ։ ա Պետ . ա . 2 ։
Հմր 1 .
Տես Ծն . լբ . 30 ։ Գլ . գ . 6 ։ Դատ . ժգ . 22 ։ Եսա . զ . 1, 5 ։ Գլ . լգ . 20, 23 ։ Յօհ . ա . 18 ։ ա Տիմ . զ . 16 ։ ա Յօհ . դ . 12 ։
Եզեկ . ա . 26 ։ ժ . 1 ։ Յայտ . դ . 3 ։
Մատ . ժէ . 2 ։
Գլ . ժթ . 21 ։
Հմր 10 ։ Գլ . լգ . 20 ։ Ծն . ժզ . 13 ։ լբ . 30 ։ բ Օր . դ . 33 ։ Դատ . ժգ . 22 ։
Ծն . լա . 54 ։ Գլ . ժը . 12 ։ ա Կոր . ժ . 18 ։
Հմր 2, 15, 18 ։
Գլ . լա . 18 ։ լբ . 15, 16 ։ բ Օր . ե . 22 ։
Գլ . լբ . 17 ։ լգ . 11 ։
Հմր 2 ։
Գլ . ժթ . 9, 16 ։ Մատ . ժէ . 5 ։
Գլ . ժգ . 10 ։ Թուե . ժգ . 10 ։

Ն.Ք. ԱՌ. 1491

ա Գլ. Գ. 2. Ժթ. 18. բ Օր. Դ. 36. Եբր. Ժբ. 18. 29.
ւ Գլ. ԼԴ. 28. բ Օր. Թ. 9.

17 Եւ Տէրոջը փառաց տեսիլքը լեռա-
նը գագաթին վրայ ա մաշող կրակի
պէս էր Իսրայէլի որդւոցը առջեւը։
18 Եւ Մովսէս ամպին մէջ մտաւ, ու
լեռը ելաւ, և ւ Մովսէս քառասուն
օր ու քառասուն գիշեր լեռը կեցաւ։

## ԳԼ. ԻԵ

1 Իսրայէլացւոց տալու ընծաները խորանին շինութեանը համար։ 10 Տապանակին ձեւ։ 17 Քաւութիւնը և քերովբէները։ 23 Սեղանը իր անօթներովը։ 31 Աշտանակը իր գործիքներովը։

ա Գլ. ԼԵ. 5. 21. ա Մն. ԻԹ. 3. 5. 9. 14. Եզր. բ. 68. գ. 5. է. 16. Նեեմ. Ժա. 2. բ Կոր. Ը. 12. Թ. 7.
բ Ծն. Խա. 42.
գ Գլ. ԻԵ. 20.
դ Գլ. Լ. 34.
ե Գլ. Լ. 23.
զ Գլ. ԻԸ. 4. 6.
է Գլ. ԻԸ. 15.
ը Գլ. ԼԶ. 1. 3. 4. Ղև. Դ. 6. Ժ. 4. Իա. 12. Եբր. Թ. 1. 2.
թ Գլ. ԻԹ. 45. գ Թագ. Զ. 13. բ Կոր. Զ. 16. Եբր. Գ. 6. Յայտ. Իա. 3.
ժ Հմր 40.
ի Գլ. ԼԷ. 1. բ Օր. Ժ. 3. Եբր. Թ. 4.

1 Եւ Տէրը խօսեցաւ Մովսէսին՝
2 ըսելով. Զրուցէ՛ Իսրայէլի որ-
դւոցը՝ որ ինծի ընծայ բերեն. ա ա-
մէն յօժար կամօք տուող մարդէն
3 պիտի առնէք իմ ընծաս։ Եւ ձեր
անոնցմէ առնելու ընծան աս է.
4 ոսկի՝ և արծաթ՝ ու պղինձ, Եւ կա-
պուտակ՝ ու ծիրանեգոյն՝ և կրրկ-
նակի կարմիր՝ ու բ բարակ քթան՝
5 և այծի մազ, Եւ կարմիր ներկուած
խոյի մորթեր՝ ու թէհաշի մորթեր՝
6 և Սատիմի փայտեր, գ Լոյսի համար
եզ՝ օծման եղի համար ու դ անու-
շահոտ խունկի համար ե համեմներ,
7 Եղնգնաքարեր՝ ու զ եփուտին ու
է լանջապանակին վրայ գամուելու
քարեր։
8 Եւ ինծի ը սրբարան մը շինեն՝ որ
9 թ իրենց մէջը բնակիմ։ Խորանին օ-
րինակը և անոր բոլոր կարասիքին
օրինակը՝ ժ բոլոր քեզի ցուցուցա-
ծիս պէս՝ ճիշդ անանկ պիտի շինէք։
10 Եւ ի Սատիմի փայտէ տապանակ
մը շինեն. անոր երկայնութիւնը
երկու կանգուն ու կէս՝ և անոր
լայնութիւնը մէկ կանգուն ու կէս՝
և անոր բարձրութիւնը մէկ կան-
11 գուն ու կէս ըլլայ։ Եւ անիկայ
զուտ ոսկիով պիտի պատես, ներ-
սէն ու դուրսէն պիտի պատես զան.
և անոր վրան բոլորտիքը՝ ոսկի
12 շրջանակ մը պիտի շինես։ Եւ անոր
համար չորս ոսկի օղակ պիտի ձու-
լես, ու անոր չորս անկիւնները դնես
զանոնք, որ անոր մէկ կողմը երկու
օղակ՝ ու մէկալ կողմը երկու օղակ
13 ըլլայ։ Եւ Սատիմի փայտէ ձողեր
պիտի շինես, ու զանոնք ոսկիով
14 պիտի պատես։ Եւ ձողերը տապա-
նակին քովերը եղած օղակներուն
պիտի անցընես, որ տապանակը ա-
15 նոնցմով վերցուի։ ւ Ձողերը տա-
պանակին օղակներուն մէջը պիտի
16 մնան. անկէ պիտի չհանուին։ Եւ
տապանակին մէջ դնես ե վկայու-
թիւնը՝ որն որ քեզի պիտի տամ։
17 Եւ ծ զուտ ոսկիէ *քաւութիւն
մը պիտի շինես, անոր երկայնու-
թիւնը երկու կանգուն ու կէս՝ և
անոր լայնութիւնը մէկ կանգուն ու
18 կէս ըլլայ։ Եւ ոսկիէ երկու քե-

լ Դ Թագ. Ը. 8.
ե Գլ. ԺԶ. 34. Լա. 18. բ Օր. Ժ. 2. 5. Լա. 26. Գ Թագ. Ը. 9. Դ Թագ. Ժա. 12. Եբր. Թ. 4.
ծ Գլ. ԼԷ. 6. Հռով. Գ. 25. Եբր. Թ. 5.
* Կամ՝ կափարիչ

րովբէներ պիտի շինես քաւութիւ-
նին երկու ծայրին վրայ. ‡ կռա-
19 ծոյ պիտի շինես զանոնք. Եւ մէկ
քերովբէն մէկ ծայրէն՝ ու մէկալ
քերովբէն մէկալ ծայրէն պիտի
շինես. քերովբէները քաւութիւ-
նէն՝ անոր երկու ծայրերուն վրայ
20 պիտի շինես։ Եւ ե քերովբէները
թեւերնին վերէն տարածելով՝ ի-
րենց թեւերովը քաւութիւնը պի-
տի ծածկեն. և անոնց երեսները
իրարու դէմ ըլլան. քերովբէնե-
րուն երեսները դէպ 'ի քաւութիւ-
21 նը պիտի ըլլայ։ ձ Եւ քաւութիւ-
նը տապանակին վրայ պիտի դնես.
և յ քեզի տալու վկայութիւնս՝ տա-
22 պանակին մէջ պիտի դնես։ Եւ
ւ հոն ես քեզի պիտի հանդիպիմ. ու
քաւութեանը վրայէն՝ վկայութեան
տապանակին վրան եղած ց երկու
քերովբէներուն մէջտեղէն՝ Իսրայէլի
որդւոցը համար բոլոր քեզի պա-
տուիրելու բաներս վրայով պիտի
խօսիմ քեզի հետ։
23 Ի Եւ Սատիմի փայտէ սեղան մը
պիտի շինես. անոր երկայնութիւ-
նը երկու կանգուն՝ և անոր լայնու-
թիւնը մէկ կանգուն՝ ու անոր բարձ-
րութիւնը մէկ կանգուն ու կէս պի-
24 տի ըլլայ։ Եւ անիկայ զուտ ոս-
կիով պիտի պատես. ու անոր բո-
լորտիքը ոսկի շրջանակ մը պիտի
25 շինես։ Եւ անոր չորս մատնաչափ
սպառուած մը պիտի շինես. ու ըս-
պառուածին բոլորտիքը ոսկի շըր-
26 ջանակ մը պիտի շինես։ Եւ անոր
չորս ոսկի օղակ պիտի շինես. ու
անոր չորս անկիւնը՝ չորս ոտքին
27 քովը պիտի դնես օղակները։ Օ-
ղակները սպառուածին քովը պիտի
ըլլան, որ սեղանը վերցընելու հա-
28 մար՝ ձողերուն տեղեր ըլլան։ Եւ
ձողերը Սատիմի փայտէ պիտի շի-
նես, ու զանոնք ոսկիով պիտի
պատես. և սեղանը անոնցմով պի-
29 տի վերցուի։ Եւ յ անոր սկուտեղ-
ները՝ ու անոր խնկամանները՝ և
բաժակները ու գաւաթները պիտի
շինես, որ անոնցմով թափելու
նուէր պիտի մատուցուի. զանոնք
30 զուտ ոսկիէ պիտի շինես։ Եւ սե-
ղանին վրան ն առաջաւորութեան
հացը պիտի դնես միշտ իմ առջեւս։
31 ւ Եւ զուտ ոսկիէ աշտանակ մը
պիտի շինես. կռածոյ պիտի շինուի
աշտանակը, ու անոր բունը՝ ճիւ-
ղերը՝ սկահակները՝ գնդակները ու
32 ծաղիկները իրմէն պիտի ըլլան։ Եւ
անոր քովերէն վեց ճիւղեր պիտի
ելլեն. աշտանակին մէկ քովէն իրեք
ճիւղ՝ և աշտանակին մէկալ քովէն
33 իրեք ճիւղ պիտի ելլեն։ Մէկ ճիւ-
ղին վրայ նշաձեւ իրեք սկահակ պի-

Ն. Ք. ԱՌ. 1491

‡ Կամ՝ ճախարակեայ
ե Գ Թագ. Ը. 7. ա Մն. ԻԸ. 18. Եբր. Թ. 5.
ձ Գլ. ԻԶ. 34.
յ Հմր 16.
ւ Գլ. ԻԹ. 42. 43. Լ. 6. 36. Ղև. ԺԶ. 2. Թու. ԺԷ. 4.
ց Թու. Է. 89. ա Թագ. Դ. 4. բ Թագ. Զ. 2. Դ Թագ. ԺԹ. 15. Սաղ. Ձ. 1. Ղ. 1. Ես. ԼԷ. 16.
Ի Գլ. ԼԷ. 10. Գ Թագ. Է. 48. բ Մն. Դ. 8. Եբր. Թ. 2.
յ Գլ. ԼԷ. 16. Թու. Դ. 7.
ն Ղև. ԻԴ. 5. 6.
ւ Գլ. ԼԷ. 17. Գ Թագ. Է. 49. Զաք. Դ. 2. Եբր. Թ. 2. Յայտ. Ա. 12. Դ. 5.

Ն․ Ք․ գՔ․
1491

տի ըլլայ՝ գնդակով ու ծաղիկով ,
և մէկալ ճիւղին վրայ նշաձև իրեք
սկահակ՝ գնդակով ու ծաղիկով .
աշտանակէն ելած վեց ճիւղերը ա-
34 սանկ պիտի ըլլան ։ Եւ աշտանա-
կին վրայ չորս նշաձև սկահակ պիտի
ըլլայ իրենց գնդակներովը ու ծա-
35 ղիկներովը ։ Եւ աշտանակէն ելած
վեց ճիւղերուն՝ երկու ճիւղին տակը
իրմէն մէկ գնդակ՝ ու երկու ճիւղին
տակը իրմէն մէկ գնդակ՝ և երկու
ճիւղին տակը իրմէն մէկ գնդակ պի-
36 տի ըլլայ ։ Անոնց գնդակները ու
ճիւղերը իրմէն պիտի ըլլան . ամէնը
մէկ կտորէ՝ զուտ ոսկիէ կռածոյ պի-
37 տի ըլլայ ։ Եւ անոր եօթը ճրագ-
ները պիտի շինես . ու *անոր ճրագ-
ները վառուած ատենը լոյսը առ-
38 ջևէն տան ։ Եւ անոր ունելիները
ու անոր բաղմակալները զուտ ոսկիէ
39 պիտի ըլլան ։ Անիկայ՝ բոլոր ասս
գործիքներով տաղանդ մը զուտ ոս-
40 կիէ պիտի շինուի ։ Եւ *նայէ որ,
լեռը քեզի ցուցուած օրինակին պէս
շինես զանոնք ։

* Գւ․ իէ․21։ Լ․ 8 ։ Ղև․ իդ․ 3, 4 ։ ր Մն․ ժգ․ 11 ։
ն Թուլ․ ը․2։
* Գւ․ իզ․ 30 ։ Թուլ․ ը․ 4 ։ ա Մն․ իը․11, 19 ։ Գոր․ է․44։ Եբր․ ը․5 ։

## ԳԼ․ ԻԶ

1 Խորանին տասը վարագոյրները ։ 7 Այծի մազէ շինուած տասնումէկ վարագոյրները ։ 14 Խոյի մորթերով ծածկոցը ։ 15՝ Խորանին տախտակները՝ իրենց խարիսխներովը ու նիգերովը ։ 31 Տապանակին առջևի վարագոյրը ։ 36 Դրան վարագոյրը ։

* Գւ․ Լզ․8 ։

1 Եւ *պիտի շինես խորանը տասը
վարագոյրներով՝ մանուած բա-
րակ քթանէ ու կապուտակէ և ծի-
րանեգոյնէ ու կրկնակի կարմիրէ .
վարպետի գործ շինես զանոնք քե-
2 րովբէներով ։ Մէկ վարագոյրին
երկայնութիւնը քսանութը կան-
գուն՝ և մէկ վարագոյրին լայնու-
թիւնը չորս կանգուն պիտի ըլլայ .
բոլոր վարագոյրներուն չափը մէկ
3 պիտի ըլլայ ։ Հինգ վարագոյրնե-
րը իրարու պիտի կցուին , և միւս
հինգ վարագոյրները իրարու պիտի
4 կցուին ։ Եւ կցուածքին ծայրի
մէկ վարագոյրին եզերքին վրայ
կապուտակեայ օղակներ պիտի շի-
նես . մէկալ կցուածքին ծայրի վա-
րագոյրին եզերքն ալ՝ անանկ պիտի
5 ընես ։ Մէկ վարագոյրին վրան
յիսուն օղակ պիտի շինես , և մէ-
կալ կցուածքին վրան եղած վարա-
գոյրին ծայրն ալ յիսուն օղակ պի-
տի շինես . օղակները դիմացէ դի-
6 մաց պիտի ըլլան ։ Եւ յիսուն կար-
թաձև ոսկի ճարմանդներ պիտի
շինես . ու վարագոյրները ճար-
մանդներով պիտի կոճկես , և մէկ
խորան պիտի ըլլայ ։
7 Եւ խորանին վրան ծածկոց ըլլա-
լու համար Եայծի մազէ վարագոյր-
ներ պիտի շինես . տասնումէկ վա-

Ե Գւ․ Լզ․ 14 ։

8 րագոյր պիտի ընես անոնք ։ Մէկ
վարագոյրին երկայնութիւնը եր-
սուն կանգուն՝ և մէկ վարագոյրին
լայնութիւնը չորս կանգուն պիտի
ըլլայ . տասնումէկ վարագոյրնե-
9 րուն չափը մէկ պիտի ըլլայ ։ Եւ
հինգ վարագոյրները զատ՝ ու վեց
վարագոյրները զատ պիտի կցես .
և վեցերորդ վարագոյրը խորանին
առջևի կողմէն երկպատիկ պիտի
10 ընես ։ Եւ կցուածքին ծայրը եղած
մէկ վարագոյրին եզերքին վրայ
յիսուն օղակ՝ ու մէկալ կցուած-
քին ծայրը եղած վարագոյրին
եզերքին վրայ յիսուն օղակ պիտի
11 շինես ։ Եւ պղնձէ յիսուն կար-
թաձև ճարմանդներ պիտի շինես ,
ու ճարմանդները օղակներուն պի-
տի անցընես , և վրանը պիտի կոճ-
12 կես , ու մէկ պիտի ըլլայ ։ Եւ
վրանին վարագոյրներէն աւելորդ
մնացածը՝ այսինքն վարագոյրին
աւելցած կէսը՝ խորանին ետևէն
13 կախուած պիտի մնայ ։ Եւ վրա-
նին վարագոյրներուն երկայնու-
թենէն մէկ կանգուն մէկ կողմէն՝
ու մէկ կանգուն մէկալ կողմէն
աւելցածը՝ խորանին քովերը կա-
խուած պիտի մնայ զանիկայ մէկ
կողմէն ու մէկալ կողմէն ծածկելու
14 համար ։ Եւ Զվրանին համար կար-
միր ներկուած խոյի մորթերէն
ծածկոց մը , ու անոր վրայէն թէ-
հաշի մորթերէն ծածկոց մը պիտի
շինես ։
15 Եւ խորանին տախտակները Սա-
տիմի փայտէ պիտի շինես որ
16 կանգնած մնան ։ Մէկ տախտակին
երկայնութիւնը տասը կանգուն՝ և
մէկ տախտակին լայնութիւնը մէկ
17 ու կէս կանգուն պիտի ըլլայ ։ Ամէն
մէկ տախտակը երկերկու ագուցիկ
ծայրեր պիտի ունենայ մէկզմէկու
քով . խորանին բոլոր տախտակնե-
18 րուն ասանկ պիտի ընես ։ Եւ խո-
րանին տախտակները պիտի շինես .
դէպ 'ի հարաւ՝ հարաւային կողմը
19 քսան տախտակ պէտք է ։ Եւ
քսան տախտակներուն տակը քառ-
սուն արծաթ խարիսխ պիտի շինես .
մէկ տախտակին տակը իր երկու ա-
գուցիկ ծայրը անցընելու համար եր-
կու խարիսխ՝ և մէկալ տախտակին
տակը իր երկու ծայրը անցընելու
համար երկու խարիսխ պիտի ըլլայ ։
20 Եւ խորանին մէկալ կողմին համար
հիւսիսային կողմը՝ քսան տախ-
21 տակ , Եւ անոնց քառասուն արծաթ
խարիսխները , մէկ տախտակին տա-
կը երկու խարիսխ՝ ու մէկալ տախ-
տակին տակը երկու խարիսխ պէտք
22 է ։ Եւ խորանին ետևի կողմին
համար արևմտեան կողմը վեց տախ-

Ն․ Ք․ գՔ․
1491

Զ Գւ․ Լզ․ 19 ։

Ն. Ք. ԳՔ.
1491

23 տակ պիտի շինես ։ Եւ խորանին
անկիւններուն համար՝ ետեւի կողմը
24 երկու տախտակ պիտի շինես ։ Եւ
վարէն պիտի կցուին, ու վերէն մէկ
օղակով կցուած մէկ պիտի ըլլան .
երկուքն ալ ասանկ պիտի ըլլայ,
անոնք երկու անկիւններուն համար
25 պիտի ըլլան . Եւ այսպէս՝ ասոնք
ութը տախտակ պիտի ըլլան . ու
անոնց արծաթ խարիսխները տասն-
ուվեց խարիսխ պիտի ըլլայ . մէկ
տախտակին տակը երկու խարիսխ՝
ու մէկալ տախտակին տակը երկու
26 խարիսխ պէտք ըլլայ ։ Եւ Սատիմի
փայտէ նիգեր պիտի շինես . խորա-
նին մէկ քովի տախտակներուն հա-
27 մար հինգ նիգ՝ Եւ խորանին մէկալ
քովի տախտակներուն համար հինգ
նիգ՝ ու դէպ 'ի արեւմուտք խորա-
նին ետեւի կողմի տախտակներուն
28 համար հինգ նիգ պիտի ըլլայ . Եւ
մէջ տեղի նիգը, այսինքն՝ տախ-
տակներուն մէջտեղը եղածը՝ մէկ
ծայրէն մէկալ ծայրը պիտի անցնի ։
29 Եւ տախտակները ոսկիով պիտի
պատես, ու անոնց օղակները՝ այս-
ինքն նիգերուն տեղերը ոսկիէ պի-
տի շինես . և նիգերը ոսկիով պիտի
պատես ։
30 Եւ պիտի կանգնես խորանը Տէր
ձեւին համեմատ, ինչպէս որ լեռանը
վրայ քեզի ցուցուեցաւ ։
31 Եւ Ֆկապուտակէ՝ ու ծիրանե-
գոյնէ՝ և կրկնակի կարմիրէ՝ ու
մանուած բարակ քթանէ վարա-
գոյր մը պիտի շինես . անիկայ
վարպետի գործ քերովբէներով պի-
32 տի շինուի ։ Եւ անիկայ Սատիմի
փայտէ չորս ոսկիապատ սիւներու
վրայ պիտի դնես . անոնց *ճան-
կերը ոսկի պիտի ըլլան . ու չորս
արծաթ խարիսխներու վրայ պիտի
33 ըլլան ։ Եւ վարագոյրը ճարմանդ-
ներէն վար պիտի կախես, ու հոն
վարագոյրին ներսի կողմը Նվկա-
յութեան տապանակը պիտի բե-
րես . և վարագոյրը ձեզի պիտի
բաժնէ Իսրբութիւնն՝ ու սրբու-
թեանց սրբութիւնին մէջտեղը ։
34 Եւ Աքաւութիւնը վկայութեան
տապանակին վրայ՝ սրբութեանց
35 սրբութիւնին մէջ պիտի դնես ։ Եւ
Բվարագոյրին դուրսի դին սեղանը,
ու Ժսեղանին դիմացը խորանին
հարաւային կողմը՝ աշտանակը պի-
տի դնես . ու սեղանը հիւսիսային
կողմը պիտի դնես ։
36 Եւ վրանին դրանը համար կա-
պուտակէ՝ ու ծիրանեգոյնէ՝ և
կրկնակի կարմիրէ՝ ու մանուած
բարակ քթանէ՝ նկարագործ Եդրան
37 վարագոյր մը պիտի շինես ։ Եւ
դրան վարագոյրի համար Սատիմի
փայտէ Լհինգ սիւն պիտի շինես, ու
զանոնք ոսկիով պիտի պատես . և
անոնց ճանկերը ոսկիէ պիտի ըլ-
լան . ու անոնց համար պղնձէ հինգ
խարիսխ պիտի ձուլես ։

Տ Գլ. ԻԵ. 9 ։ 40 ։ ԻԷ. 8 ։ Գործ. Է. 44 ։ Եբր. Ը. 5 ։
Ի Գլ. ԼԶ. 35 ։ Ղև. ԺԶ. 2 ։ Բ. Մն. Գ. 14 ։ Մատ. ԻԷ. 51 ։ Եբր. Թ. 3 ։
* Կամ՝ խո-յակները
Ն Գլ. ԻԵ. 16 ։ Խ. 21 ։
Ի Ղև. ԺԶ. 2 ։ Եբր. Թ. 2, 3 ։
Ա Գլ. ԻԵ. 21 ։ Խ. 20 ։ Եբր. Թ. 5 ։
Բ Գլ. Խ. 22 ։ Եբր. Թ. 2 ։
Ժ Գլ. Խ. 24 ։
Ի Գլ. ԼԶ. 37 ։
Լ Գլ. ԼԶ. 38 ։

## ԳԼ. ԻԷ

1 Ողջակէզին սեղանը իր գործիքներովը ։ 9 Խորանին սրահը՝ վարագոյրներով ու սիւներով . 18 անոր երկայնութիւնը և լայնութիւնը ։ 20 Լոյսի համար եղ ։

1 Եւ Աողջակէզի սեղանը Սատիմի փայտէ
պիտի շինես, երկայնութիւնը
հինգ կանգուն՝ ու լայնութիւնը
հինգ կանգուն . սեղանը քառա-
կուսի պիտի ըլլայ, և անոր բարձ-
րութիւնը իրեք կանգուն պէտք ըլ-
2 լայ ։ Եւ անոր եղջիւրները անոր
չորս անկիւններուն վրայ պիտի շի-
նես . անոր եղջիւրները իրմէն պիտի
ըլլան . ու Բզանիկայ պղնձով պիտի
3 պատես ։ Եւ անոր մոխիրը ժողվե-
լու համար անոր թաղարները՝ ու
անոր թիակները և անոր կոնքերը՝ ու
անոր մսահանները՝ ու անոր կրակի
ամանները պիտի շինես . անոր բոլոր
գործիքները պղնձէ պիտի շինես ։
4 Եւ անոր ցանցակերպ կասկարայ մը
պիտի շինես պղնձէ . ու ցանցին
վրայ չորս պղնձէ օղակ պիտի շինես՝
5 անոր չորս անկիւններուն վրայ ։ Եւ
պիտի դնես անիկայ սեղանին շրջա-
նակին տակը ներքեւէն, որ ցանցը
գրեթէ սեղանին մէջտեղը ըլլայ ։
6 Եւ սեղանին համար ձողեր պիտի
շինես . ձողերը Սատիմի փայտէ պի-
տի ըլլան . ու զանոնք պղնձով պի-
7 տի պատես ։ Եւ անոր ձողերը
օղակներուն պիտի անցուին . ու
ձողերը սեղանին երկու քովերը պի-
տի ըլլան՝ անիկայ վերցնելու հա-
8 մար ։ Անիկայ տախտակներէ՝ մէջը
դատարկ պիտի շինես . Գլեռը քեզի
ցուցուածին պէս՝ անանկ պիտի
շինեն անիկայ ։
9 Եւ Տխորանին սրահը պիտի
շինես . հարաւային կողմին համար՝
սրահին վարագոյրները մանուած
բարակ քթանէ ըլլալով՝ մէկ քովի
երկայնութիւնը հարիւր կանգուն
10 պիտի ըլլայ ։ Եւ անոր քսան սիւ-
ները ու անոնց քսան խարիսխները
պղնձէ, ու սիւներուն ճանկերը և
անոնց կապերը արծաթէ պիտի ըլ-
11 լան ։ Եւ նոյնպէս հիւսիսային
կողմին համար սրահին երկայնու-
թեանը նայելով՝ վարագոյրները
հարիւր կանգուն երկայն պիտի ըլ-
լան . ու անոր քսան սիւները և
անոնց քսան խարիսխները պղնձէ,
սիւներուն ճանկերը ու անոնց կա-
12 պերը արծաթէ պիտի ըլլան ։ Եւ
արեւմտեան կողմին համար սրահին

Ն. Ք. ԳՔ.
1491

Ա Գլ. ԼԸ. 1 ։ Եզեկ. ԽԳ. 13 ։
Բ Տես Թուոց. ԺԶ. 38 ։
Գ Գլ. ԻԵ. 40 ։ ԻԶ. 30 ։
Տ Գլ. ԼԸ. 9 ։

Ն. Ք. ՂԲ. 1491

լայնութեանը նայելով՝ վարագոյր-
ները յիսուն կանգուն պիտի ըլ-
լան . անոնց սիւները տասը՝ ու ա-
նոնց խարիսխները տասը պիտի ըլ-
13 լան ։ Եւ սրահին արևելեան կողմին
համար՝ անոր լայնութիւնը արև-
ելեան կողմէն յիսուն կանգուն պի-
14 տի ըլլայ ։ Եւ դրանը մէկ քովին
վարագոյրները տասնուհինգ կան-
գուն պիտի ըլլան . անոնց սիւները
իրեք՝ ու անոնց խարիսխները իրեք ։
15 Եւ միւս քովին վարագոյրները
տասնուհինգ կանգուն պիտի ըլլան .
անոնց սիւները իրեք՝ ու անոնց խա-
16 րիսխները իրեք ։ Եւ սրահին դրա-
նը համար՝ կապուտակէ՝ ու ծիրանե-
գոյնէ՝ և կրկնակի կարմիրէ՝ ու մա-
նուած բարակ քթանէ՝ քսան կան-
գունի նկարագործ վարագոյր մը
պէտք շինես . անոնց սիւները չորս՝ ու
անոնց խարիսխները չորս պիտի ըլ-
17 լան ։ Սրահին բոլորտիքը եղած
բոլոր սիւները արծաթ կապերով՝
ու անոնց ճանկերը արծաթէ՝ և ա-
նոնց խարիսխները պղնձէ պիտի ըլ-
18 լան ։ Սրահին երկայնութիւնը հա-
րիւր կանգուն՝ ու լայնութիւնը ա-
մէն տեղ յիսուն՝ և բարձրութիւնը
հինգ կանգուն . վարագոյրները մա-
նուած բարակ քթանէ պիտի ըլլան ,
ու անոնց խարիսխները պղնձէ պի-
19 տի ըլլան ։ Խորանին բոլոր գործիք-
ները իր ամէն պաշտօնին համար՝ և
անոր բոլոր ցիցերը՝ ու սրահին բո-
լոր ցիցերը պղնձէ պիտի ըլլան ։
20 Եւ ᴱդուն պիտի պատուիրես Իս-
րայէլի որդւոցը՝ որ քեզի ծեծուած
մաքուր ձէթ բերեն լոյսի համար ,
21 որ կանթեղները միշտ վառին ։ ՂԱ-
հարոնը ու անոր որդիները ժողովքի
խորանին մէջ՝ ᴱվկայութեանը առ-
ջևի վարագոյրին դուրսի դին՝ իրի-
կունէ մինչև առտու Տէրոջը առ-
ջևը ան վառելու կարգադրեն . Ըա-
ւիտեան անոնց յաւիտենական կանոն
ըլլայ իրենց ազգերուն մէջ Իսրայէ-
լի որդւոցը կողմանէ ։

Ե Ղև. ԻԴ. 2։ Ղ Գլ. Լ. 8։ Ա Թագ. Գ. 3։ Բ Մն. ԺԳ. 11։ Ե Գլ. ԻԶ. 31, 33։ Է Գլ. ԻԸ. 43։ ԻԹ. 9, 28։ Ղև. Գ. 17։ ԺԶ. 34։ ԻԴ. 9։ Թու. ԺԸ. 23։ ԺԹ. 21։ Ա Թագ. Լ. 25։

## ԳԼ. ԻԸ

1 Ահարոնը ու անոր որդիքը քահանայութեան համար կ՚ընտրուին ։ 2 Սուրբ զգեստներ շինելու հրամանը ։ 6 Եփուտը ։ 15 Տասուերկու պատուական քարերով զարդարուած լանջապանակը ։ 30 Ուրիմը ու Թումիմը ։ 31 Եփուտին պատմուճանը նուռերով և զանգակներով ։ 36 Խոյրին առջևի կողմի թիթեղը ։ 39 Նկարագործ շապիկը ։ 40 Ահարոնին որդւոցը զգեստները ։

1 Եւ դուն քեզի մօտեցուր ᴬքու
եղբայրդ Ահարոնը՝ ու անոր որ-
դիները իր հետը՝ Իսրայէլի որդւոցը
մէջէն , որ ինծի քահանայութիւն
ընեն . Ահարոնը՝ և Ահարոնին որ-
դիները Նադաբը ու Աբիուդը՝ Ե-
2 ղիազարը ու Իթամարը ։ Եւ ᴮքու
եղբօրդ Ահարոնին սուրբ զգեստներ
պիտի շինես պատուոյ ու փառաց
3 համար ։ Եւ ᴳդուն ըսէ բոլոր ի-
մաստուն միտք ունեցողներուն՝ ᴰո-
րոնք որ ես իմաստութեան հոգիով
լեցուցի , որ Ահարոնին զգեստները
շինեն՝ անիկայ օծելու համար՝ որ
4 ինծի քահանայութիւն ընէ ։ Եւ
անոնց շինելու զգեստները ասոնք
են . ᴱլանջապանակ՝ ու ᶻեփուտ՝ և
ᴱպատմուճան՝ ու ᴱնկարագործ շա-
պիկ՝ խոյր՝ և գօտի . և սուրբ զգ-
գեստներ շինեն քու եղբօրդ Ահարո-
նին՝ ու անոր որդիներուն , որ ինծի
քահանայութիւն ընեն ։
5 Եւ անոնք պիտի առնեն ոսկին՝ ու
կապուտակը՝ և ծիրանեգոյնը՝ ու
կրկնակի կարմիրը՝ և բարակ քթա-
6 նը . Թ Եւ ոսկիէ՝ կապուտակէ՝
ու ծիրանեգոյնէ՝ կրկնակի կարմիրէ՝
և մանուած բարակ քթանէ՝ վար-
պետի գործ պիտի շինեն եփուտը ։
7 Անոր երկու ուսերը երկու կցուած
ծայրեր պիտի ունենան , որ իրարու
8 միացած ըլլայ ։ Եւ եփուտին վրայ
եղած ժապաւէնը՝ անոր շինուած-
քին պէս նոյն բանէն պիտի ըլլայ .
ոսկիէ՝ կապուտակէ՝ ու ծիրանե-
գոյնէ՝ և կրկնակի կարմիրէ՝ ու մա-
նուած բարակ քթանէ պիտի ըլլայ ։
9 Եւ երկու եղնգնաքարեր պիտի առ-
նես , ու անոնց վրան Իսրայէլի որ-
դւոցը անունները պիտի փորագրես ։
10 Անոնց անուններուն վեցը մէկ քա-
րին վրայ՝ և մնացած վեց անուննե-
րը միւս քարին վրայ՝ անոնց ծը-
նունդներուն համեմատ պէտք փո-
11 րագրես . Ան երկու քարերուն վրայ
Իսրայէլի որդւոցը անունները ա-
կունք բանողի գործով՝ մատանիի կնիք
փորագրածնուն պէս պիտի փորա-
գրես . ոսկի խորշերու մէջ պիտի
12 դամես անոնք ։ Եւ երկու քարերը
եփուտին ուսերուն վրայ պիտի
դնես , որ Իսրայէլի որդւոցը յիշա-
տակի քարեր ըլլան . ու ᴶԱհարոնը
անոնց անունները ᴷյիշատակի հա-
մար իր երկու ուսերուն վրայ պի-
13 տի կրէ Տէրոջը առջևը ։ Եւ ոսկիէ
14 ճարմանդներ պիտի շինես . Եւ
զուտ ոսկիէ հիւսուած եզերքի եր-
կու շղթաներ պիտի շինես , ու
հիւսուած շղթաները ճարմանդնե-
րուն պիտի անցընես ։
15 Եւ ᴸդատաստանի լանջապանակ
պիտի շինես վարպետի գործ . անի-
կայ եփուտին շինուածքին պէս պի-
տի շինես . ոսկիէ՝ կապուտակէ՝ ու
ծիրանեգոյնէ՝ և կրկնակի կարմիրէ՝
ու մանուած բարակ քթանէ պիտի
16 շինես ։ Քառանկիւնի երկուքի ծալ-
լուող պիտի ըլլայ . անոր երկայնու-

Ա Թու. ԺԸ. 7։ Եբր. Ե. 1, 4։

Բ Գլ. ԻԹ. 5, 29։ Լա. 10։ ԼԹ. 1, 2։ Ղև. Ը. 7, 30։ Թու. Ի. 26, 28։ Գ Գլ. Լա. 6։ ԼԶ. 1։ Դ Գլ. Լա. 3։ ԼԵ. 30, 31։ Ե Հմր 15։ Զ Հմր 6։ Է Հմր 31։ Ը Հմր 39։ Թ Գլ. ԼԹ. 2։ Ժ Հմր 29։ Գլ. ԼԹ. 7։ Է Տես Յես. Գ. 7։ Զաք. Զ. 14։ Լ Գլ. ԼԹ. 8։

Ն. Ք. Ծ. 1491

ի Գլ. լթ. 10, ևն ։

թիւնը մէկ թիզ՝ ու անոր լայնու-
17 թիւնը մէկ թիզ պիտի ըլլայ ։ ի Եւ
անոր մէջ ակունքներու գամուած-
քին համեմատ՝ չորս կարգ քարեր
պիտի գամես . առջի կարգը՝ սարդի-
ոն, տպազիոն ու զմրուխտ առաջին
18 կարգը պիտի ըլլայ ։ Եւ երկրորդ
կարգը պիտի ըլլայ կարկեհան, շա-
19 փիւղայ ու անդամանդ . Եւ երրորդ
կարգը պիտի ըլլայ գոճազմ, ակատ
20 ու մեղեսիկ . Եւ չորրորդ կարգը
պիտի ըլլայ ոսկեքար՝ եղնգնաքար ու
յասպիս . ասոնք ոսկի խորշերու մէջ
21 գամուած պիտի ըլլան ։ Եւ քա-
րերը Իսրայէլի որդւոցը անուննե-
րուն պէս տասուերկու պիտի ըլլան,
անոնց անուններուն համեմատ՝ ա-
մէն մէկը իր անունովը տասուերկու
ցեղին համեմատ՝ կնիք փորագրողի
գործով փորագրուած պիտի ըլլան ։
22 Եւ լանջապանակին վրան զուտ ոս-
կիէ հիւսուած եզերքի շղթաներ
23 պիտի շինես ։ Եւ լանջապանակին
վրան երկու ոսկի օղակներ պիտի
շինես, ու ան երկու օղակները լան-
ջապանակին երկու ծայրերուն վրայ
24 պիտի դնես ։ Եւ ան երկու հիւսուած
ոսկի շղթաները՝ լանջապանակին
ծայրը եղած երկու օղակներուն
25 պիտի անցընես ։ Եւ երկու հիւ-
սուած շղթաներուն միւս երկու
ծայրերը՝ ան երկու ճարմանդնե-
րուն պիտի անցընես . ու զանոնք
եփուտին առջևի կողմէն ուսերուն
26 վրայ պիտի դնես ։ Եւ երկու ոսկի
օղակներ ալ պիտի շինես . ու զա-
նոնք լանջապանակին ներսի կողմէն՝
եփուտին կցուած եզերքին երկու
27 ծայրերը պիտի դնես ։ Եւ ուրիշ
երկու ոսկի օղակներ պիտի շինես,
ու զանոնք եփուտին երկու ուսե-
րուն վարէն՝ անոր առջևի կողմի
կցուածքին մօտ՝ եփուտին ժապա-
28 ւէնին վրայէն պիտի անցընես ։ Եւ
լանջապանակը իր օղակներէն՝
կապուտակէ շինուած լարով եփու-
տին օղակներուն կապեն, որ ե-
փուտին ժապաւէնին վրայ ըլլայ,
ու լանջապանակը եփուտին վրայէն
29 չզատուի ։ Եւ Ահարոնը երբոր
սրբարանը մտնէ, Իսրայէլի որ-
դւոցը անունները Տէրոջը առջևը
ծ յիշատակի համար՝ միշտ իր սրտին
վրայ եղած դատաստանի լանջա-
30 պանակին վրայ պիտի կրէ ։ Եւ
ե դատաստանի լանջապանակին վը-
րայ *Ուրիմը ու Թումիմը" պիտի
դնես . և Ահարոնին սրտին վրայ
պիտի ըլլան, երբոր անիկայ Տէրոջը
առջևը երթայ . ու Ահարոն Տէրոջը
առջևը միշտ իր սրտին վրայ պիտի
կրէ Իսրայէլի որդւոցը դատաստա-
նը ։

ծ Հմր 12 ։

ե Ղև. ը. 8 ։ Թուոց. իէ. 21 ։ բ Օր. լգ. 8 ։ ա Թագ. իը. 6 ։ Եզր. բ. 63 ։ Նեէմ. է. 65 ։

* Այս՝ լոյսը և ճշմարտութիւնը ։

31 Եւ ա եփուտին պատմուճանը բո-
լորովին կապուտակէ պիտի շինես ։
32 Եւ անոր մէջտեղը գլուխ անցնելու
ճեղքուածք մը պիտի ըլլայ . ճեղ-
քուածքին բոլորտիքը զրահի ճեղ-
քուածքին պէս հիւսուած եզերք
33 ունենայ՝ որ չպատռի ։ Եւ անոր
քղանցքներուն վրայ կապուտակէ՝
ու ծիրանեգոյնէ՝ և կրկնակի կար-
միրէ նուռեր պիտի շինես քղանցք-
ներուն բոլորտիքը, ու անոնց մէջ-
տեղը շուրջանակի ոսկի զանգակ-
34 ներ ։ Պատմուճանին քղանցքին
վրայ շուրջանակի ոսկի զանգակ մը
ու նուռ մը՝ ոսկի զանգակ մը ու
35 նուռ մը պիտի ըլլայ ։ Եւ պաշ-
տօնի համար՝ անիկայ Ահարոնին
վրան պիտի ըլլայ . ու Տէրոջը առ-
ջև սրբարանը մտած ու ելած ա-
տենը՝ անոր ձայնը պիտի լսուի որ
չմեռնի ։
36 Եւ յ զուտ ոսկիէ թիթեղ մը
պիտի շինես, ու անոր վրան կնիք
փորագրածներուն պէս ՍՐԲՈՒԹԻՒՆ
37 ՏԵԱՌՆ փորագրես ։ Եւ կապու-
տակ ժապաւէն մը անցընես ա-
նոր՝ որ խոյրին վրայ դրուի . և
խոյրին վրան՝ անոր առջևի կողմը
38 ըլլայ ։ Եւ անիկայ՝ Ահարոնին ճա-
կատին վրայ պիտի ըլլայ, որ Իս-
րայէլի որդւոցը նուիրած ղ բոլոր
սուրբ ընծաներուն անօրէնութիւնը
Ահարոնը կրէ . ու միշտ իր ճակա-
տին վրայ պիտի ըլլայ, որ անոնք
ճ ընդունելի ըլլան Տէրոջը առջևը ։
39 Եւ շապիկը բարակ քթանէ նկա-
րէն հիւսես, ու խոյրը բարակ քը-
թանէ պիտի շինես, և գօտին նկա-
րագործ պիտի շինես ։
40 մ Եւ Ահարոնին որդւոցը շապիկ-
ներ պիտի շինես, ու անոնց գօտի-
ներ պիտի շինես . և պատուոյ ու
փառաց համար անոնց ապարօշներ
41 պիտի շինես ։ Եւ զանոնք քու եղ-
բօրդ Ահարոնին՝ ու իր հետը իր
որդւոցը պիտի հագցընես . ու
յ զանոնք պիտի օծես, և ն † պիտի
օրհնես", ու սրբես զանոնք՝ որ ինծի
42 քահանայութիւն ընեն ։ Եւ ա-
նոնց շ կտաւէ անդրավարտիքներ
պիտի շինես իրենց մարմնին մեր-
կութիւնը ծածկելու համար . ա-
նոնց մէջքերէն մինչև ծունկեր-
43 նին պիտի հասնին ։ Եւ անոնք
Ահարոնին ու անոր որդւոցը վը-
րայ պիտի ըլլան՝ երբոր ժողովքի
խորանը մտնեն, կամ երբոր ո սե-
ղանին մօտենան սրբարանին մէջ
պաշտելու համար, որ չըլլայ թէ
չ անօրէնութիւն կրեն ու մեռնին .
պ ասիկա յաւիտենական կանոն մը
ըլլայ իրեն՝ ու իրմէ ետքը իր սե-
րունդին ։

Ն. Ք. Ծ. 1491

ա Գլ. լթ. 22 ։

յ Գլ. լթ. 30 ։ Զաք. ժդ. 20 ։

ղ Հմր 43 ։ Ղև. ժ. 17 ։ իբ. 9 ։ Թուոց. ժը. 1 ։ Եսա. ծգ. 11 ։ Եզեկ. դ. 4, 5, 6 ։ Յովհ. ա. 29 ։ Եբր. թ. 28 ։ ա Պետ. բ. 24 ։

ճ Ղև. ա. 4 ։ իբ. 27 ։ իգ. 11 ։ Եսա. ծզ. 7 ։

մ Հմր 4 ։ Գլ. լթ. 27, 28, 29, 41 ։ Եզեկ. խդ. 17, 18 ։

յ Գլ. իթ. 7 ։ լ. 30 ։ խ. 15 ։ Ղև. ժ. 7 ։

ն Գլ. իթ. 9 ։ ևն ։ Ղև. ը ։ Եբր. է. 28 ։

† Եբր. անոնց ձեռքը պիտի լեցընես,

շ Գլ. լթ. 28 ։ Ղև. զ. 10 ։ ժզ. 4 ։ Եզեկ. խդ. 18 ։

ո Գլ. ի. 26 ։

չ Ղև. ե. 1, 17 ։ ի. 19, 20 ։ իբ. 9 ։ Թուոց. թ. 13 ։ ժը. 22 ։

պ Գլ. իէ. 21 ։ Ղև. ժէ. 7 ։

Ն. Ք. ԴՔ. 1491

## ԳԼ. ԻԹ

1 Քահանայի օրհնութեան զոհերը ու արարողութիւնները ։ 38 Մշտնջենաւոր ողջակէզը ։ 45 Աստուած կը խոստանայ բնակիլ Իսրայելացւոց մէջ ։

1 Եւ ասիկա է որ անոնց պիտի ընես՝
զանոնք սրբելու համար, որ ին-
ծի քահանայ ըլլան. արջառներէն
ա զուարակ մը ու երկու անարատ
2 խոյ պիտի առնես, Եւ բ անխմոր
հաց՝ ու եղով շաղուած անխմոր
շօթեր՝ և եղով օծուած անխմոր
լաւաշներ առնես. ասոնք ցորենի
3 բարակ ալիւրէն պիտի շինես. Եւ
սակառի մը մէջ պիտի դնես. ու
անոնք սակառին մէջ, և զուարա-
կը ու երկու խոյերը պիտի մօտե-
4 ցընես ։ Եւ Ահարոնը ու անոր որ-
դիները ժողովքի խորանին դրանը
պիտի մօտեցընես, գ ու անոնք
5 ջրով պիտի լուաս ։ դ Եւ զգեստ-
ները պիտի առնես, ու շապիկը՝ և
եփուտին պատմուճանը՝ ու եփու-
տը և լանջապանակը Ահարոնին պի-
պի հագցընես. ու ե եփուտին ժա-
պաւէնովը պիտի գօտեւորես զանի-
6 կայ ։ զ Եւ խոյրը անոր գլուխը պի-
տի դնես, ու խոյրին վրայ սուրբ
7 պսակը պիտի դնես ։ Եւ է օծման
եղը պիտի առնես, ու անոր գլխուն
վրայ թափելով՝ պիտի օծես զանի-
8 կայ ։ Եւ ը անոր որդիները պիտի
մօտեցընես, ու անոնց շապիկներ
9 պիտի հագցընես. Եւ գօտիներով
պիտի գօտեւորես զանոնք՝ (այսինքն
Ահարոնը ու անոր որդիները,) ու
անոնց գլուխը ապարօշներ պիտի
փաթթես. ու թ քահանայութիւնը
անոնցը ըլլայ յաւիտենական կա-
նոնով ։ Այսպէս ժ պիտի օրհնես
Ահարոնը ու անոր որդիները ։
10 Եւ զուարակը ժողովքի խորանին
առջեւը պիտի մօտեցընես. ու ի Ա-
հարոն և անոր որդիները իրենց
ձեռքը զուարակին գլխուն վրայ
11 պիտի դնեն ։ Եւ ժողովքի խորա-
նին դրանը քով՝ Տէրոջը առջեւը պի-
12 տի մորթես զուարակը ։ Եւ լ զուա-
րակին արիւնէն պիտի առնես, ու
մատովդ սեղանին խ եղջիւրներուն
վրան պիտի դնես. և մնացած բոլոր
արիւնը սեղանին տակովը պիտի
13 թափես ։ Եւ ծ փորոտիքը ծածկող
ամէն ճարպը՝ ու *լեարդին վրան
եղած թաղանթը՝ և երկու երի-
կամունքը՝ ու անոնց վրան եղած
ճարպը պիտի առնես, և սեղանին
14 վրայ պիտի այրես ։ Բայց կ զուա-
րակին միսը՝ ու անոր մորթը՝ և ա-
նոր աղբը՝ բանակին դուրսի դին
կրակով պիտի այրես. ասիկա մեղքի
պատարագ է ։
15 Եւ հ խոյերուն մէկը պիտի առ-

ա Ղև. ը. 2։
բ Ղև. բ. 4։ զ. 20, 21, 22։
գ Գւ. խ. 12։ Ղև. ը. 6։ Եբր. ժ. 22։
դ Գւ. իը. 2։ և. ը. 7։
ե Գւ. իը. 8։
զ Ղև. ը. 9։
է Գւ. իը. 41։ ւ. 25։ Ղև. ը. 12։ ժ. 7։ իա. 10։ Թու. լե. 25։
ը Ղև. ը. 13։
թ Թու. ժը. 7։
ժ Գւ. իը. 41։ Ղև. ը. 22։ ...։ Եբր. է. 28։
ի Ղև. ա. 4։ ը. 14։
լ Ղև. ը. 15։
խ Գւ. իէ. 2։ ւ. 2։
ծ Ղև. գ. 3։
* Կամ՝ լերդաբոյթը
կ Ղև. դ. 11, 12, 21։ Եբր. ժգ. 11։
հ Ղև. ը. 18։

նես, և Ահարոնը ու անոր որդի-
քը ձ իրենց ձեռքերը խոյին գլխուն
16 վրայ պիտի դնեն ։ Եւ այն խոյը
պիտի մորթես, ու անոր արիւնը
պիտի առնես, և սեղանին վրայ
17 շուրջանակի պիտի սրսկես ։ Եւ
խոյը կտոր կտոր պիտի ընես, ու
անոր փորոտիքը և անոր ոտքերը
պիտի լուաս, ու զանոնք անոր
կտորներուն և գլխուն վրայ պիտի
18 դնես ։ Եւ բոլոր խոյը պիտի այրես
սեղանին վրայ. ասիկա ողջակէզ է
Տէրոջը. ղ անուշահոտ պատարագ
մըն է Տէրոջը ։
19 ճ Եւ միւսալ խոյը պիտի առնես.
ու Ահարոն և անոր որդիքը իրենց
ձեռքերը խոյին գլխուն վրայ պիտի
20 դնեն ։ Եւ խոյը պիտի մորթես,
ու անոր արիւնէն պիտի առնես, և
Ահարոնին աջ ականջին բլթակին
վրայ՝ ու անոր որդւոցը աջ ականջ-
ներուն բլթակին վրայ՝ և անոնց աջ
ձեռքին մեծ մատին վրայ՝ ու ա-
նոնց աջ ոտքին մեծ մատին վրայ
պիտի դնես. և մնացած արիւնը
սեղանին վրայ շուրջանակի պի-
21 տի սրսկես ։ Եւ սեղանին վրայ
եղած արիւնէն՝ ու մ օծման եղէն
պիտի առնես, և Ահարոնին վրայ
ու անոր զգեստներուն վրայ՝ և ա-
նոր հետ իր որդւոցը վրայ՝ ու իր
որդւոցը զգեստներուն վրայ սրրս-
կես. և յ անիկայ՝ ու անոր զգեստ-
ները՝ և անոր հետ իր որդիները՝ ու
իր որդւոցը զգեստները սուրբ պիտի
22 ըլլան ։ Եւ խոյէն պիտի առնես
ճարպը՝ ու դմակը՝ և փորոտիքը
ծածկող ճարպը՝ և լեարդին վրայի
թաղանթը՝ ու երկու երիկամունքը՝
և անոնց վրայ եղած ճարպը ու աջ
զիստը. ինչու որ աս քահանայէ օրհ-
23 նութեան խոյն է ։ ն Եւ Տէրոջը
առջեւ եղած անխմոր հացի սակա-
ռէն մէկ պան հացի՝ ու մէկ եղով
հացի շօթ՝ և մէկ լաւաշ պիտի առ-
24 նես. Եւ ամէնը Ահարոնին ձեռքը՝
ու անոր որդւոցը ձեռքը պիտի դը-
նես, և շ զանոնք Տէրոջը առջեւ
երերցընելու ընծայ մատուցանես ։
25 ո Եւ անոնց ձեռքէն առնես զա-
նոնք, ու սեղանին վրայի ողջակէ-
զին վրայ այրես Տէրոջը առջեւ ա-
նուշ հոտի համար. ասիկայ պա-
26 տարագ մըն է Տէրոջը ։ Եւ Ահա-
րոնին քահանայ օրհնուելուն համար
պատրաստուած խոյէն՝ չ երբուծը
պիտի առնես, ու զանիկայ Տէրոջը
առջեւ երերցընելու ընծայ մատու-
ցանես. և այն պքու բաժինդ ըլլայ ։
27 Եւ Ահարոնին համար ու անոր որ-
դւոցը համար եղած քահանայէ
օրհնութեան խոյէն ջ երերցընելու
երբուծը ու բարձրացընելու զիստը,

Ն. Ք. ԴՔ. 1491

ձ Ղև. ա. 4—9։
ղ Ծն. ը. 21։
ճ Հմր 3։ Ղև. ը. 22։
մ Գւ. ւ. 25, 31։ Ղև. ը. 30։
յ Հմր 1։ Եբր. թ. 22։
ն Ղև. ը. 26։
շ Ղև. է. 30։
ո Ղև. ը. 28։
չ Ղև. ը. 29։
պ Տես Սաղ. ղթ. 6։
ջ Ղև. է. 31, 34։ Թու. ժը. 11, 18։
ռ Օր. ժը. 3։

Ն․ Ք․ ԶՔ․
1491

(որ կ՚երերցուի ու կը բարձրացուի․)
28 պիտի սրբես ։ Եւ ասիկայ յաւի-
տենական կանոնով Ահարոնին ու
անոր որդւոցը պիտի ըլլայ՝ Իսրա-
յէլի որդւոցը կողմանէ․ ինչու որ
աս բարձրացընելու ընծայ է․ և
պիտի ըլլայ բարձրացընելու ըն-
ծայ՝ Իսրայէլի որդւոցմէն իրենց
խաղաղութեան զոհերէն բաժին ի-
րենց բարձրացընելու ընծան դէպ՚ի
Տէրոջը ։
29 Եւ Ահարոնին սուրբ զգեստները
իրմէն ետքը իր որդւոցը պիտի ըլ-
լան, որ անոնցմով օծուին․ ու ա-
30 նոնցմով օրհնուին ։ Եւ անիկայ որ
իր որդւոցմէ իր տեղը քահանայ ըլ-
լալով՝ պաշտօն կատարելու համար
ժողովքի խորանը՝ սրբարանը պիտի
մտնէ, զանոնք եօթը օր պիտի
31 հագնի ։ Եւ նուիրական օրհնութեան
խոյը պիտի առնես՝ ու անոր միսը
32 սուրբ տեղ մը եփես․ Եւ Ահարոն
ու անոր որդիքը ժողովքի խորանին
դրանը քով պիտի ուտեն խոյին
33 միսը ու սակառին մէջի հացը ։ Եւ
անոնք պիտի ուտեն ան բաները՝ որ
իրենց օրհնուելուն ու սրբուելուն
համար անոնցմով քաւութիւն ե-
ղաւ, և օտարական մը անոնցմէ
պիտի չուտէ․ ինչու որ անոնք սուրբ
34 են ։ Եւ թէ որ օրհնութեան միսէն
ու հացէն մինչև առտու մնայ, ան
աւելցածը կրակով պիտի այրես․
անիկայ պիտի չուտուի, ինչու որ
սուրբ է ։
35 Եւ Ահարոնին ու անոր որդւոցը
աանկ պիտի ընես, բոլոր քեզի
ապսպրածիս պէս․ եօթը օրուան
մէջ պիտի կատարես անոնց օրհնու-
36 թիւնը ։ Եւ օրը մէկ զուարակ
մեղքի պատարագ ընես քաւու-
թեան համար․ ու սեղանին համար
քաւութիւն ընելու ատենդ պիտի
մաքրես զանիկայ, և սուրբ ընելու
37 համար պիտի օծես զանիկայ ։ Սե-
ղանին համար եօթը օր քաւու-
թիւն պիտի ընես, ու սուրբ ընես
ան․ և սեղանը ամենասուրբ պի-
տի ըլլայ․ ինչ որ սեղանին դպչի
սուրբ պիտի ըլլայ ։
38 Եւ սեղանին վրայ ընելու բանը աս
է․ Շարունակ ամէն օր մէկ տարեկան
39 երկու գառինք․ Մէկ գառը առա-
ւօտուանց պիտի մատուցանես, ու
մէկալ գառը իրիկուան դէմ մա-
40 տուցանես ։ Եւ մէկ գառին հետ մէկ
հիմենի քառորդ ծեծուած ձէթով
շաղուած մէկ տասանորդ բարակ
ալիւր․ և թափելու նուէրին համար
մէկ հիմենի քառորդ մը գինի մա-
41 տուցանես ։ Եւ մէկալ գառը իրի-
կուան դէմ պիտի զոհես․ ու առ-
տուան հացի ընծային պէս և անոր
թափելու նուէրին պէս պիտի ընես
անոր․ աս՝ անուշահոտ պատարագ
42 մըն է Տէրոջը ։ Ասիկայ ձեր ազգե-
րուն մէջ մշտնջենաւոր ողջակէզ
պիտի ըլլայ Տէրոջը առջևը ժողով-
քի խորանին դրանը քով, ուր որ
ձեզի պիտի հանդիպիմ՝ քեզի հետ
43 խօսելու ։ Եւ հոն Իսրայէլի որդւոցը
պիտի հանդիպիմ, ու խորանը իմ
44 փառքովս սուրբ պիտի ըլլայ ։ Եւ
ժողովքի խորանը ու սեղանը պիտի
սրբեմ․ Ահարոնը ու անոր որդի-
ներն ալ պիտի սրբեմ, որ ինծի
45 քահանայութիւն ընեն ։ Եւ Իս-
րայէլի որդւոցը մէջ պիտի բնակիմ,
ու անոնց Աստուած պիտի ըլլամ․
46 Եւ պիտի գիտնան թէ անոնց Տէր
Աստուածը ես եմ, որ անոնց մէջը
բնակելու համար՝ Եգիպտոսի երկ-
րէն հանեցի զանոնք․ ես եմ անոնց
Տէր Աստուածը ։

ԳԼ․ Լ

1 Խունկի սեղանը ։ 11 Հոգիներուն փրկանքը ։
17 Պղնձէ աւազանը ։ 22 Օծման սուրբ եղը ։
34 Անուշահոտ խունկին բաղադրութիւնը ։

1 Եւ խունկ ծխելու սեղան մը
պիտի շինես․ Սատիմի փայտէ
2 պիտի շինես անիկայ․ Անոր երկայ-
նութիւնը կանգուն մը՝ ու անոր
լայնութիւնը կանգուն մը՝ քառա-
կուսի պիտի ըլլայ, և անոր բարձ-
րութիւնը երկու կանգուն․ անոր
3 եղջիւրները իրմէն պիտի ըլլան ։ Եւ
անոր վրան՝ ու անոր քովերը շուր-
ջանակի՝ և անոր եղջիւրները զուտ
ոսկիով պիտի պատես․ ու շուրջա-
նակի ոսկի պսակ մը պիտի շինես ա-
4 նոր ։ Եւ երկու ոսկի օղակներ պի-
տի շինես անոր․ պսակին տակէն՝
անոր երկու քովերը երկու կողմերէն
պիտի շինես․ որ ան՝ անոնցմով
վերցուելու համար ձողերուն անցը-
5 նելու տեղերը ըլլան ։ Եւ ձողերը
Սատիմի փայտէ պիտի շինես, ու
6 անոնք ոսկիով պատես․ Եւ անիկայ
պիտի դնես վկայութեանը վրայի
վարագոյրին առջևը՝ վկայու-
թեան տապանակին քովը եղած
քաւութիւնին առջևը, ուր որ ես
7 քեզի պիտի հանդիպիմ ։ Եւ Ահա-
րոն անոր վրայ անուշահոտ խունկ
պիտի ծխէ․ ամէն առտու ճրագ-
ները շիտկած ատենը խունկ պիտի
8 ծխէ ։ Եւ Ահարոն իրիկուան դէմ
ճրագները վառած ատենը խունկ
պիտի ծխէ, որ Տէրոջը առջևը
մշտնջենաւոր խունկ ըլլայ ձեր ազ-
9 գերուն մէջ ։ Անոր վրան օտար
խունկ, կամ ողջակէզ, կամ հացի
ընծայ պիտի չմատուցանէք․ ոչ
ալ անոր վրան նուէր պիտի թա-

Ն․ Ք․ ԶՔ․ 1491 (left margin):
Ղև․ Ժ․ 15։
Ղև․ Է․ 34։
Թուոց․ Ի․ 26, 28։
Թուոց․ ԺԸ․ 8։ ԼԵ․ 25։
Թուոց․ Ի․ 28։
Ղև․ Ը․ 35։ Թ․ 1․ 8։
Ղև․ Ը․ 31։
Մատ․ ԺԲ․ 4։
Ղև․ Ժ․ 14, 15, 17։
Ղև․ ԻԲ․ 10։
Ղև․ Ը․ 32։
Գլ․ Խ․ 12։ Ղև․ Ը․ 33, 34, 35։
Եբր․ Ժ․ 11։
Գլ․ Լ․ 26, 28, 29։ Խ․ 10։
Գլ․ Խ․ 10։
Գլ․ Լ․ 29։ Մատ․ ԻԳ․ 19։
Դան․ Թ․ 27։ ԺԲ․ 11։
Թուոց․ ԻԸ․ 3։ Ա Մն․ ԺԶ․ 40։ Բ Մն․ Բ․ 4։ ԺԳ․ 11։ ԼԱ․ 3։ Եզր․ Գ․ 3։
Դ Թագ․ ԺԶ․ 15։ Եզեկ․ ԽԶ․ 13, 14, 15։
Դ Թագ․ ԺԸ․ 29, 36։ Դ Թագ․ ԺԶ․ 15։ Եզր․ Թ․ 4, 5։ Սաղ․ ՃԽԱ․ 2։ Դան․ Թ․ 21։

Ն․ Ք․ ԶՔ․ 1491 (right margin):
Հմր 38։ Գլ․ Լ․ 8։ Թուոց․ ԻԸ․ 6։ Դան․ Ը․ 11, 12, 13։
Գլ․ ԻԵ․ 22։ Լ․ 6, 36։ Թուոց․ ԺԷ․ 4։
Գլ․ Խ․ 34։ Գ Թագ․ Ը․ 11․ Բ Մն․ Ե․ 14․ Է․ 1, 2․ 3․ Եզեկ․ ԽԳ․ 5։
Անգ․ Բ․ 7․ 9։ Մաղ․ Գ․ 1։
Ղև․ ԻԱ․ 15։ ԻԲ․ 9, 16։
Գլ․ ԻԵ 8։ Ղև․ ԻԶ․ 12։ Զաք․ Ը․ 10։ Յովհ․ ԺԴ․ 17, 23։ Բ Կոր․ Զ․ 16։ Յայտ․ ԻԱ․ 3։
Գլ․ Ի․ 2։

Յետ․ Հմր 7․ 8․ 10։ Ղև․ Դ․ 7, 18։ Յայտ․ Ը․ 3։
Գլ․ ԼԷ․ 25։ Ի․ 5։
Գլ․ ԻԶ․ 21, 22։
Հմր 34։ Ա Թագ․ Բ․ 28։ Ա Մն․ ԻԳ․ 13։ Ղուկ․ Ա․ 9։
Գլ․ ԻԷ․ 21։
Գլ․ ԺԲ․ 6։
Ղև․ Ժ․ 1։

10 փէք ։ Եւ Ահարոն տարին անգամ
մը անոր եղջիւրներուն վրայ քաւու-
թիւն պիտի ընէ . անիկայ քաւու-
թիւններուն մեղքի պատարագին
արիւնովը անոր վրայ քաւութիւն
պիտի ընէ տարին անգամ մը ձեր
ազգերուն մէջ . անիկայ ամենա-
սուրբ է Տէրոջը ։
11 Եւ Տէրը խօսեցաւ Մովսէսին՝
12 ըսելով . Երբոր Իսրայէլի որդւոցը
գումարը առնելու ըլլաս՝ իրենց
թուոյն նայելով, ան ատենը անոնց
ամէն մէկը իր հոգւոյն փրկանքը
պիտի տայ Տէրոջը՝ զանոնք համ-
րած ատենդ, որ անոնց մէջը հա-
րուած չըլլայ՝ երբոր զանոնք համ-
13 րես ։ Անոնք աս պիտի տան . ա-
մէն մէկը՝ որ կ'անցնի կը համրուի,
սրբարանին սիկղին համեմատ՝ կէս
սիկղ սրբարանին սիկղէն տայ . մէկ սիկղը
քսան կերա է . Տէրոջը ընծան
14 կէս սիկղ պիտի ըլլայ ։ Ամէն քսան
տարեկանէն վեր եղողը՝ որ կ'անցնի
կը համրուի, այն ընծան Տէրոջը
15 պիտի տայ ։ Երբոր ձեր հոգիներուն
քաւութիւն ընելու համար Տէրոջը
ընծայ տան, կէս սիկղէն ոչ հա-
րուստը աւելի՝ ու ոչ աղքատը պա-
16 կաս պիտի տայ ։ Եւ Իսրայէլի
որդւոցմէ քաւութեան արծաթը
պիտի առնես, ու ժողովքի խորա-
նին պաշտօնին պիտի տաս, որ
Տէրոջը առջեւը նշանակ ըլլայ
Իսրայէլի որդւոցը՝ ձեր հոգիներուն
քաւութիւն ընելու համար ։
17 Եւ Տէրը խօսեցաւ Մովսէսին՝
18 ըսելով . Նաեւ պղնձէ աւազան մը
պիտի շինես լուացման համար, ու
անոր խարիսխն ալ պղնձէ ըլլայ . և
ժողովքի խորանին ու սեղանին
մէջտեղը պիտի դնես զան, ու անոր
19 մէջը ջուր պիտի լեցընես ։ Եւ Ա-
հարոն ու անոր որդիքը իրենց
ձեռքերը ու ոտքերը պիտի լուան
20 անկից ։ Երբոր անոնք ժողովքի
խորանը մտնելու ըլլան, կամ երբոր
սեղանին մօտենալու ըլլան՝ պաշտօն
կատարելու ու կրակով Տէրոջը զոհ
մատուցանելու համար, ջրով պի-
21 տի լուացուին՝ որ չմեռնին . Այս-
պէս իրենց ձեռքերը ու ոտքերը պի-
տի լուան՝ որ չմեռնին . և նոյնպէս
իրենց յաւիտենական կանոն պիտի
ըլլայ, թէ իրեն և թէ իր սերուն-
դին իրենց ազգերուն մէջ ։
22 Եւ Տէրը խօսեցաւ Մովսէսին՝ ը-
23 սելով . Ա'ռ քեզի ազնուական հա-
մեմներ, զուտ զմուռս հինգ հարիւր
սիկղ, և անոր կէսին չափ՝ այսինքն
երկու հարիւր յիսուն սիկղ անու-
շահոտ կինամոն, ու երկու հարիւր
յիսուն սիկղ անուշահոտ խունկե-
24 ղէգն, Եւ հինգ հարիւր սիկղ կա-
սիայ սրբարանին սիկղին համեմատ,
25 ու մէկ հիմէն ձէթ . Եւ սուրբ օծ-
ման եղ պիտի շինես ան՝ իւղագործի
արհեստով բաղադրուած . անիկայ
սուրբ օծման եղ պիտի ըլլայ ։
26 Եւ անով պիտի օծես ժողովքի
խորանը, ու վկայութեան տապա-
27 նակը, Եւ սեղանը ու անոր ամէն
անօթները, և աշտանակը ու անոր
գործիքները, և խունկին սեղանը,
28 Եւ ողջակէզին սեղանը իր ամէն
գործիքներուն հետ մէկտեղ, և ա-
29 ւազանը ու անոր խարիսխը ։ Եւ
պիտի սրբես անոնք, որ ամենա-
սուրբ ըլլան . Ինչ որ անոնց դպչի՝
30 սուրբ պիտի ըլլայ ։ Եւ Ահարոնը
ու անոր որդիքը պիտի օծես, ու
սուրբ պիտի ընես անոնք, որ ինծի
31 քահանայութիւն ընեն ։ Եւ Իսրա-
յէլի որդւոցը պիտի խօսիս՝ ըսե-
լով . Ասիկայ ինծի սուրբ օծման
եղ պիտի ըլլայ ձեր ազգերուն մէջ ։
32 Մարդու մարմնի վրայ պիտի չթա-
փուի ան, և անոր բաղադրութեա-
նը պէս անոր նմանը պիտի չշինէք .
աս սուրբ է, ու ձեզի սուրբ պիտի
33 ըլլայ ։ Ո'վ որ անոր նմանը շինէ,
կամ ով որ անկէ օտարականի վը-
րայ դնէ, իր ժողովուրդէն պիտի
կորսուի ։
34 Եւ Տէրը ըսաւ Մովսէսին . Ա'ռ
քեզի անուշահոտ համեմներ, այս-
ինքն ստաշխն ու եղունգն և քաղ-
բան, ու անուշահոտ համեմները
մաքուր կնդրուկով . ամէնը հա-
35 ւասար կշռով պիտի ըլլան . Եւ ա-
նոնք իւղագործի արհեստով իրար
խառնուած անուշահոտ բա-
ղադրութիւն մը պիտի շինես մա-
36 քուր ու սուրբ ։ Եւ անկէ քիչ մը
պիտի ծեծես շատ բարակ, ու ժո-
ղովքի խորանին մէջ վկայութեանը
առջեւը դնես, ուր որ ես քեզի
պիտի հանդիպիմ . Ձեզի անիկայ
37 ամենասուրբ պիտի ըլլայ ։ Եւ ան
քու շինելու անուշահոտ բաղադ-
րութեանդ արհեստովը՝ դուք
ձեզի համար պիտի չշինէք . ան ձեզի
սուրբ պիտի ըլլայ Տէրոջը համար ։
38 Ո'վ որ հոտոտելու համար անոր
նմանը շինելու ըլլայ, իր ժողովուր-
դէն պիտի կորսուի ։

## ԳԼ · ԼԱ

1 Տէրը կ'ընտրէ Բեսելիէլը ու Ողիաբը՝ խորա-
նին գործքերը ընելու . 12 և շաբաթը պահե-
լու պատուէրը կը նորոգէ ։ 18 Մովսէս երկու
տախտակները կ'ընդունի ։

1 Եւ Տէրը խօսեցաւ Մովսէսին՝
2 ըսելով . Ահա Յուդայի ցեղէն
Ովրի որդւոյն Ուրիին որդին Բե-
3 սելիէլը անունովը կանչեցի . Եւ
Աստուծոյ Հոգիովը՝ իմաստու-

Ն · Ք · ԶՔ · 1491
Ղե · ժզ · 18 ։ իգ · 27 ։
Գլ · լը · 25 ։ Թու · ա · 2 · 5 · իզ · 2 · բ Թագ · իդ · 2 ։
Յոբ · լգ · 24 ։ լզ · 18 ։ Սաղ · խթ · 7 ։ Մատ · ի · 28 ։ Մար · ժ · 45 ։ ա Տիմ · բ · 6 ։ ա Պետ · ա · 18 · 19 ։
բ Թագ · իդ · 15 ։
Մատ · ժէ · 24 ։
Ղե · իէ · 25 ։ Թու · գ · 47 ։ Եզեկ · խե · 12 ։
Գլ · լը · 26 ։
Հմր 12 ։
Յոբ · լդ · 19 ։ Առակ · իբ · 2 · Եփե · զ · 9 ։ Կող · գ · 25 ։
Գլ · լը · 25 ։
Թու · ժգ · 40 ։
Գլ · լը · 8 ։ գ Թագ · է · 38 ։
Գլ · խ · 7 · 30 ։
Գլ · խ · 31 · 32 ։ Սաղ · իզ · 6 ։ Եսայ · ծբ · 11 ։ Յով · ժգ · 10 ։ Եբր · ժ · 22 ։
Գլ · իը · 43 ։
Երգ · դ · 14 ։ Եզեկ · իէ · 22 ։
Սաղ · խե · 8 ։ Առակ · է · 17 ։
Երգ · դ · 14 ։ Երեմ · զ · 20 ։
Սաղ · խե · 8 ։

Ն · Ք · ԶՔ · 1491
Գլ · իթ · 40 ։
Գլ · լէ · 29 ։ Թու · լե · 25 ։ Սաղ · ձթ · 20 ։ ճլգ · 2 ։
Գլ · խ · 9 ։ Ղե · ը · 10 ։ Թու · է · 1 ։
Գլ · իթ · 37 ։
Գլ · իթ · 7 ։ Ղե · ը · 12 · 30 ։
Հմր 25 · 37 ։
Հմր 38 ։
Ծն · ժէ · 14 ։ Գլ · ժբ · 15 ։ Ղե · է · 20 · 21 ։
Գլ · իե · 6 ։ լէ · 29 ։
Հմր 25 ։
Կամ՝ աղուած · տես Ղե · բ · 13 ։
Գլ · իթ · 42 ։ Ղե · ժզ · 2 ։
Հմր 32 ։ Գլ · իթ · 37 ։ Ղե · բ · 3 ։
Հմր 32 ։
Հմր 33 ։
Գլ · լե · 30 ։ լզ · 1 ։
ա Մն · բ · 20 ։
Գլ · լե · 31 ։ գ Թագ · է · 14 ։

Ն․Ք․ԳՔ․ 1491

թիւնով ու հանճարով և գիտու-
թիւնով ու ամէն կերպ ճարտարու-
4 թիւնով լեցուցի անիկայ, Որ վար-
պետի գործեր հնարելով՝ ոսկիով ու
5 արծաթով և պղնձով գործէ. Եւ
գամելու համար քարեր բանելով՝
ու փայտեր քանդակելով՝ ամէն
6 կերպ արհեստը բանի։ Եւ ահա
Դանի ցեղէն Աքիսամային որդին
Ողիաբը տուի անոր հետ. ու
ամէն իմաստունին սրտին մէջ
իմաստութիւնը դրի, որ բոլոր
7 քեզի պատուիրածս ընեն. Ժողո-
վքի խորանը՝ և վկայութեան
տապանակը ու անոր վրայ եղած
քաւութիւնը՝ և խորանին բոլոր
8 կարասիները, Եւ սեղանը ու անոր
անօթները՝ և մաքուր աշտանակը
իր բոլոր գործիքներովը՝ և խունկին
9 սեղանը, Եւ ողջակէզին սեղանը իր
բոլոր գործիքներովը՝ և աւազանը
10 ու անոր խարիսխը, Եւ պաշտօնին
լաթերը՝ ու Ահարոն քահանային
սուրբ զգեստները՝ և անոր որդւոցը
զգեստները՝ քահանայութիւն ընե-
11 լու համար, Եւ օծման եղը՝ ու
սրբարանին համար անուշահոտ
խունկը՝ բոլոր քեզի պատուիրածիս
պէս պիտի ընեն։
12 Եւ Տէրը խօսեցաւ Մովսէսին՝ ու
13 ըսաւ. Զրուցէ նաև Իսրայէլի
որդւոցը՝ ըսելով. Անշուշտ իմ
շաբաթներս պիտի պահէք. ինչու
որ աս նշան մըն է իմ ու ձեր մէջ-
տեղը ձեր ազգերուն մէջ, որ
գիտնաք թէ ձեզ սուրբ ընող Տէ-
14 րը ես եմ։ Ուստի շաբաթը
պիտի պահէք. ինչու որ ան
ձեզի սուրբ է. ամէն ով որ զանի-
կայ պղծէ՝ անշուշտ պիտի մեռնի.
քանզի ով որ ան օրը գործ մը
գործէ, ան անձը իր ժողովուրդին
15 մէջէն պիտի կորսուի։ Վեց օր
գործ պիտի գործուի, բայց եօթ-
ներորդ օրը հանգստութեան շաբա-
թը սուրբ պիտի ըլլայ Տէրոջը.
ով որ շաբաթ օրը գործ մը գործէ,
16 անշուշտ պիտի մեռցուի։ Անոր
համար Իսրայէլի որդիքը պիտի
պահեն շաբաթը, որ շաբաթը ի-
րենց ազգերուն մէջ յաւիտենական
17 ուխտ մը ըլլայ։ Անիկայ յաւի-
տենական նշան մըն է իմ ու Իսրա-
յէլի որդւոցը մէջտեղը. քանզի
Տէրը վեց օրուան մէջ ստեղծեց
երկինքը ու երկիրը, և եօթներորդ
օրը դադարեցաւ ու հանգստացաւ։
18 Եւ երբոր Սինայ լեռանը վրայ
Մովսէսին հետ խօսիլը լմնցուց,
վկայութեան երկու տախտակնե-
րը տուաւ անոր, Աստուծոյ մա-
տովը գրուած՝ քարէ տախտակ-
ներ։

ա Գլ. լե. 34։
բ Գլ. իը. 3։ լե. 10, 35։ լզ. 1։
գ Գլ. լզ. 8։
դ Գլ. լէ. 1։
ե Գլ. լէ. 6։
զ Գլ. լէ. 10։
է Գլ. լէ. 17։
ը Գլ. լը. 1։
թ Գլ. լը. 8։
ժ Գլ. լթ. 1, 41։ Թուոց. դ. 5, 6, ևն։
ի Գլ. լ. 25, 31։ լէ. 29։
լ Գլ. լ. 34։ լէ. 29։
խ Ղևտ. ժթ. 3, 30։ իզ. 2։ Եզեկ. ի. 12, 20։ իդ. 24։
ծ Գլ. ի. 8։ բ Օր. ե. 12։ Եզեկ. ի. 12։
կ Գլ. լե. 2։ Թուոց. ժե. 35։
հ Գլ. ի. 9։
ձ Ծն. բ. 2։ Գլ. ժզ. 23։ ի. 10։
ղ Հմր 13։ Եզեկ. ի. 12, 20։
ճ Ծն. ա. 31։ բ. 2։
մ Գլ. իդ. 12։ լբ. 15, 16։ լդ. 28, 29։ բ Օր. դ. 13։ ե. 22։ թ. 10, 11։ բ Կոր. գ. 3։

## ԳԼ. ԼԲ

1 Ժողովուրդը՝ Մովսէսին հեռաւորութեան ժամանակը Ահարոնին որթ մը շինել կու տայ։ 7 Աստուած կը բարկանայ աս բանիս վրայ, 11 բայց Մովսէսին աղաչանքովը բարկութիւնը կը դադրի։ 15 Մովսէս լեռնէն կ'իջնէ իր ձեռքը ունենալով երկու տախտակները. 19 որոնք կը կոտրէ։ 20 Որթը փոշի կ'ընէ։ 22 Ահարոն զինքը կ'արդարացընէ. 25 Մովսէս կը պատուիրէ կռապաշտները մեռցընել։ 31 Ժողովուրդին համար կ'աղօթէ։

Ն․Ք․ԳՔ․ 1491

1 Եւ ժողովուրդը տեսնելով որ
Մովսէսը ուշացաւ լեռնէն իջ-
նելու, ժողովուրդը Ահարոնին քովը
ժողվուեցան՝ ու ըսին անոր. Ե-
լի՛ր, մեզի աստուածներ շինէ՛ որ
մեր առջևէն երթան. քանզի ան
Մովսէսը՝ մեզ Եգիպտոսի երկրէն
հանող մարդը, չենք գիտեր թէ
2 ինչ եղաւ անոր։ Եւ Ահարոն
ըսաւ անոնց. Ձեր կնիկներուն,
ձեր տղաքներուն և ձեր աղջիկնե-
րուն ականջները եղած ոսկի օղե-
3 րը հանեցէք, ու ինծի բերէք։ Եւ
բոլոր ժողովուրդը իրենց ականջնե-
րը եղած ոսկի օղերը հանեցին՝ ու
4 Ահարոնին բերին։ Եւ անիկայ
առաւ անոնց ձեռքէն, ու *տի-
պով մը շինեց, և ձուլածոյ որթ
մը ըրաւ։ Եւ ըսին. Ո՛վ Իսրայէլ,
ասոնք են քու աստուածներդ՝ որ
քեզ Եգիպտոսի երկրէն հանեցին։
5 Եւ երբ Ահարոն տեսաւ զանիկայ,
անոր առջևը սեղան մը շինեց. և
Ահարոն հրատարակել տուաւ՝ ը-
6 սելով. Վաղը տօն է Տէրոջը։ Եւ
հետևեալ առաւօտուն կանուխ ե-
լան, ու ողջակէզներ մատուցին, և
խաղաղութեան զոհեր բերին. և
ժողովուրդը ուտելու ու խմելու
նստան, ու խաղալու ելան։
7 Եւ Տէրը ըսաւ Մովսէսին. Գնա՛
իջի՛ր. ինչու որ անօրինեցաւ քու
ժողովուրդդ՝ որ Եգիպտոսի երկրէն
8 հանեցիր. Անոնք շուտով խոտորե-
ցան ան ճամբայէն՝ որն որ իրենց
պատուիրեցի. իրենց ձուլածոյ
որթ շինեցին, և անոր երկրպա-
գութիւն ըրին, ու անոր զոհեր
մատուցին, ու ըսին. Ո՛վ Իսրա-
յէլ, ասոնք են քու աստուած-
ներդ՝ որ քեզ Եգիպտոսի երկրէն
9 հանեցին։ Եւ Տէրը ըսաւ Մովսէ-
սին. Ես տեսայ աս ժողովուրդը,
և ահա աս խստապարանոց ժողո-
10 վուրդ մըն է։ Ուստի հիմա թող
տուր ինծի՝ որ իմ բարկութիւնս
անոնց վրայ բորբոքի, ու փճացը-
նեմ զանոնք. և քեզ մեծ ազգ մը
11 ընեմ։ Եւ Մովսէս իր Տէր Աս-
տուծոյն առջևը աղաչեց, ու ը-
սաւ. Ո՛վ Տէր, ինչո՞ւ քու բար-
կութիւնդ բորբոքի քու ժողո-
վուրդիդ վրայ, որ Եգիպտոսի

ա Գլ. իդ. 18։ բ Օր. թ. 9։
բ Գործ. է. 40։
գ Գլ. ժգ. 21։
դ Դատ. ը. 24, 25, 26, 27։
ե Գլ. ի. 23։ բ Օր. թ. 16։ Դատ. ժէ. 3, 4։ գ Թագ. ժբ. 28։ Նէեմ. թ. 18։ Սաղ. ճզ. 19։ Ես. խզ. 6։ Գործ. է. 41։ Հռով. ա. 23։
* Կամ՝ քանդակագործի գրիչով
զ Ղև. իգ. 2, 4, 21, 37։ դ Թագ. ժ. 20։ բ Մն. լ. 5։
է ա Կոր. ժ. 7։
ը բ Օր. թ. 12։ Հմր 1։ Գլ. լգ. 1։ Դան. թ. 24։
թ Ծն. զ. 11, 12։ բ Օր. դ. 16։ լբ. 5։ Դատ. բ. 19։ Ովս. թ. 9։
ժ Գլ. ի. 3, 4, 23։ բ Օր. թ. 16։
ի դ Թագ. ժբ. 28։
լ Գլ. լգ. 3, 5։ լդ. 9։ բ Օր. թ. 6, 13։ լա. 27։ բ Մն. լ. 8։ Ես. խը. 4։ Գործ. է. 51։
խ բ Օր. թ. 14, 19։
ծ Գլ. իբ. 24։
կ Թուոց. ժդ. 12։
հ բ Օր. թ. 18, 26, 27, 28, 29։ Սաղ. հդ. 1, 2։ ճզ. 23։

Ն. Ք. ԴՔ.
1491

երկրէն հանեցիր մեծ զօրութիւ-
12 նով ու զօրաւոր ձեռքով . Ինչո՞ւ
համար Եգիպտացիք խօսին ու ը-
սեն թէ՝ Չարութեան համար հա-
նեց զանոնք՝ որ լեռներուն մէջը
մեռցընէ , ու զանոնք երկրի երեսէն
փճացընէ . դարձիր քու սաստիկ
բարկութենէդ , ու *զղջացիր այս
չարիքը քու ժողովուրդիդ վրայ
13 բերելէն ։ Յիշէ քու ծառաներդ
Աբրահամը՝ Իսահակը ու Իսրայէ-
լը , որոնց դուն քու անձովդ եր-
դում ըրիր ու ըսիր անոնց Ձեր
սերունդը երկինքին աստղերուն
պէս պիտի շատցընեմ , և բոլոր աս
երկիրը՝ որուն վրայով խօսեցայ .
ձեր սերունդին պիտի տամ , ու ան
14 պիտի ժառանգէն յաւիտեան . Եւ
Տէրը զղջաց ան չարիքին համար՝
որ ըսեր էր թէ իր ժողովուրդին
պիտի ընէ ։
15 Եւ Մովսէս դարձաւ ու լեռնէն
իջաւ , ու վկայութեան երկու տախ-
տակները իր ձեռքն էին . տախտակ-
ները իրենց երկու քովերէն գրուած
էին . անոնք մէկ կողմէն ու մէկալ
16 կողմէն գրուած էին ։ Եւ տախ-
տակները Աստուծոյ գործքն էին . ու
տախտակներուն վրայ փորագրուած
17 գիրը Աստուծոյ գրածն էր ։ Ու
երբոր Յեսու պոռացող ժողովուր-
դին ձայնը լսեց , ըսաւ Մովսէսին .
Բանակին մէջ պատերազմի ձայն
18 կայ ։ Եւ անիկայ ըսաւ . Աս յաղ-
թողներու աղաղակի ձայն չէ , ո՛չ
ալ յաղթուածներու աղաղակի
ձայն է . հապա խաղի ձայն կը լը-
19 սեմ ես ։ Եւ եղաւ որ բանակին
մօտենալով՝ որթը ու պար բռնող-
ները տեսածին պէս , Մովսէսին
բարկութիւնը բորբոքեցաւ . ու
տախտակները իր ձեռքէն նետեց ,
ու լեռանը վարի դին կոտրտեց զա-
20 նոնք ։ Եւ անոնց շինած որթը
առաւ , ու կրակով այրեց , ու ման-
րեց փոշի ըրաւ , և ջուրին վրայ
ցանեց , ու Իսրայէլի որդւոցը խըմ-
ցուց ։
21 Եւ Մովսէս ըսաւ Ահարոնին .
Աս ժողովուրդը ի՞նչ ըրաւ քեզի ,
որ անոնց վրայ այսչափ մեծ մեղք մը
22 բերիր ։ Եւ Ահարոն ըսաւ . Թող
իմ տիրոջս բարկութիւնը չբորբո-
քի . Դուն գիտես աս ժողովուր-
23 դը՝ որ չարին հակամիտեալ են . Եւ
ինծի ըսին թէ՝ Մեզի աստուած-
ներ շինէ որ մեր առջևէն երթան .
ինչու որ ան Մովսէսը՝ մեզ Եգիպ-
տոսի երկրէն հանող մարդը՝ չենք
24 գիտեր թէ անոր ինչ եղաւ ։ Եւ
ես ըսի անոնց . Ո՛վ որ ոսկի ունի ,
թող հանէ . ու բերին ինծի . և կը-
րակը ձգեցի ան , ու աս որթը ելաւ ։

Թուոց ժդ. 13 ։ Բ Օր. թ. 28 ։ լբ. 27 ։
* Եբր. զղջա Հմր 14 ։
Ծն. իբ. 16 ։ Եբր. զ. 13 ։ Ծն. ժբ. 7 ։ ժգ. 15 ։ ժե. 7, 18 ։ իզ. 4 ։ իը. 13 ։ լե. 11, 12 ։
Բ Օր. լբ. 26 ։ Բ Թագ. իդ. 16 ։ Ա Մն. իա. 15 ։ Սաղ. ճզ. 45 ։ Երեմ. ժը. 8 ։ իզ. 13, 19 ։ Յովել. բ. 13 ։ Յովն. գ. 10 ։ դ. 2 ։
Բ Օր. թ. 15 ։
Գլ. լա. 18 ։
Բ Օր. թ. 16, 17 ։
Բ Օր. թ. 21 ։
Ծն. ի. 9 ։ իզ. 10 ։
Գլ. ժգ. 11 ։ ժե. 24 ։ ժզ. 2, 20, 28 ։ ժէ. 2, 4 ։
Հմր 1 ։
Հմր 4 ։

25 Եւ երբոր Մովսէս ժողովուրդին
†անառակութիւնը տեսաւ , (քան-
զի Ահարոն ‡թող տուեր էր զա-
նոնք անառակութիւն ընելու՝ ի-
րենց թշնամիներուն մէջը խայտա-
26 ռակ ըլլալու չափ .) Ան ատենը
Մովսէս բանակին դուռը կայնե-
ցաւ , ու ըսաւ . Ո՛վ որ Տէրոջը
կողմէն է , թող ինծի գայ . և Ղե-
ւիին բոլոր որդիքը անոր քովը
27 ժողվուեցան . Եւ ըսաւ անոնց .
Իսրայէլին Տէր Աստուածը ասանկ
կ՚ըսէ . Ամէն մարդ իր սուրը թող
իր մէջքը դնէ ու բանակին մէջ
դռնէ դուռ անցնին դառնան , և
ամէն մարդ իր եղբայրը՝ ու ամէն
մարդ իր ընկերը՝ և ամէն մարդ իր
28 դրացին մեռցընէ . Եւ Ղևիին որ-
դիքը Մովսէսին խօսքին պէս ըրին .
ու ան օրը ժողովուրդէն իրեք հա-
29 զար մարդու չափ ինկան ։ Քանզի
Մովսէս ըսեր էր թէ՝ Այսօր ձեզմէ
ամէն մէկը իր որդւոյն վրայ՝ ու
իր եղբօրը վրայ ինքզինքը Տէրոջը
նուիրէ , որ ձեր վրայ օրհնութիւն
տայ այսօր ։
30 Եւ եղաւ որ հետևեալ օրը Մով-
սէս ըսաւ ժողովուրդին . Դուք
մեծ մեղք գործեցիք . ու հիմա
Տէրոջը պիտի ելլեմ , թերևս քա-
ւութիւն ընեմ ձեր մեղքին հա-
31 մար ։ Եւ Մովսէս դարձաւ Տէ-
րոջը՝ ու ըսաւ . Ո՛հ , աս ժողովուր-
դը մեծ մեղք գործեց , իրեն ոսկիէ
32 աստուածներ շինելով ։ Բայց հի-
մա թէ որ անոնց մեղքերը կը նե-
րես՝ ներէ՛ , եթէ ո՛չ՝ կ՚աղաչեմ
33 աւրէ զիս քու գրած գիրքէդ ։ Եւ
Տէրը ըսաւ Մովսէսին . Ո՛վ որ
ինծի մեղանչեց , անիկայ իմ գիր-
34 քէս պիտի աւրեմ ։ Ուստի հիմա
գնա՛ , ժողովուրդը ան տեղը տար ,
որն որ քեզի ըսի . Ահա՛ իմ հրեշ-
տակս քու առջևէդ պիտի երթայ .
բայց այցելութիւն ընելու օրս՝
անոնց մեղքը իրենց վրայ պիտի
35 բերեմ ։ Եւ Տէրը զարկաւ ժողո-
վուրդը , Ահարոնին շինած որթը
շինելնուն համար ։

Ն. Ք. ԴՔ.
1491

† Կամ՝ մերկ ըլլալը
Բ Մն. իը. 19 ։
‡ Կամ՝ մերկացուց զանոնք՝
Թուոց իե. 5 ։ Բ Օր. լգ. 9 ։
Թուոց իե. 11, 12, 13 ։ Բ Օր. ժգ. 6—11 ։ լգ. 9, 10 ։ Ա Թագ. ժե. 18, 22 ։ Առակ. իա. 3 ։ Զաք. ժգ. 3 ։ Մատ. ժ. 37 ։
Ա Թագ. ժբ. 20, 23 ։ Ղուկ. ժե. 18 ։
Բ Թագ. ժզ. 12 ։ Ամով. ե. 15 ։
Թուոց իե. 13 ։
Բ Օր. թ. 18 ։
Գլ. ի. 23 ։
Սաղ. կթ. 28 ։ Հռով. թ. 3 ։
Սաղ. ծզ. 8 ։ ճլթ. 16 ։ Դան. ժբ. 1 ։ Փիլ. դ. 3 ։ Յայտ. գ. 5 ։ ժգ. 8 ։ ժէ. 8 ։ ի. 12, 15 ։ իա. 27 ։ իբ. 19 ։
Ղև. իզ. 30 ։ Եզեկ. ժը. 4 ։
Գլ. լգ. 2, 14 ։ Թուոց ի. 16 ։
Բ Օր. լբ. 35 ։ Ամով. գ. 14 ։ Հռով. բ. 5, 6 ։
Բ Թագ. ժբ. 9 ։ Գործ. է. 41 ։

## ԳԼ. ԼԳ

1 Տէրը չյօժարիր ժողովուրդին հետ երթալու՝ իր առջի խոստմանը պէս ։ 4 Ժողովուրդը աս բանիս վրայ կը տրտմի ։ 7 Խորանը բանակէն դուրս կը հանուի ։ 9 Տէրը դէմ առ դէմ կը խօսի Մովսէսին հետ ։ 12 Մովսէս կը ցանկայ Աստուծոյ փառքը տեսնելու ։

1 Եւ Տէրը ըսաւ Մովսէսին . Ելի՛ր
ասկէ դուն՝ ու ժողովուրդն
ալ՝ որ Եգիպտոսի երկրէն հանե-
ցիր , գնա՛ ան երկիրը՝ որուն
համար երդում ըրի Աբրահամին՝
Իսահակին ու Յակոբին՝ ըսելով .
Քու սերունդիդ պիտի տամ ան ։

Գլ. լբ. 7 ։
Ծն. ժբ. 7 ։ Գլ. լբ. 13 ։

2 ᵃԵւ քու առջեւդ հրեշտակ մը
պիտի խրկեմ , ᵇու Քանանացին՝
Ամօրհացին՝ Քետացին՝ Փերեզա-
ցին՝ Խեւացին ու Յեբուսացին
3 պիտի վռնտեմ ։ ᶜԿաթ ու մեղր
բղխող երկիրը պիտի ելլէք . ᵈվասնզի
որ ես ձեր *հետը պիտի չելլեմ .
քանզի դուն ᵉխստապարանոց ժո-
ղովուրդ մըն ես . չըլլայ որ ᶠքեզ
ճամբուն մէջ բնաջինջ ընեմ ։
4 Ու երբոր ժողովուրդը աս չար
խօսքը լսեց , ᵍսուգ ըրաւ . ʰեւ մէկը
5 իր զարդը իր վրան չդրաւ . Ինչու
որ Տէրը ըսած էր Մովսէսին . Ըսէ
Իսրայէլի որդւոցը . ⁱԴուք խստա-
պարանոց ժողովուրդ մըն էք . մէկ
րոպէ մը ʲձեր մէջը ելլելու ըլլամ,
ձեզ բնաջինջ պիտի ընեմ . ուստի
հիմա ձեր վրայէն զարդերնիդ վեր-
ցուցէք , որ ᵏձեզի ընելիքս գիտ-
6 նամ ։ Եւ Իսրայէլի որդիքը իրենց
զարդերը հանեցին Քորեբ լեռանը
քովը ։
7 Եւ Մովսէս առաւ խորանը , ու
բանակին դուրսի դին՝ բանակէն
հեռու կանգնեց զան , և ˡանոր ա-
նունը՝ ᵐԺողովքի խորան դրաւ . և
ⁿով որ ᵒՏէրը կը խնդրէր , բանակին
դուրսի դին եղած Ժողովքի խորա-
8 նը կ'ելլէր ։ Ու երբոր Մովսէս խո-
րանը կ'երթար , բոլոր ժողովուրդը
կ'ելլէր , ու ամէն մէկը ᵖիր վրանին
դուռը կը կայնէր , ու Մովսէսին
ետեւէն կը նայէր , մինչեւ որ անիկայ
9 խորանը մտնէր ։ Եւ Մովսէս խո-
րանը մտածին պէս՝ ամպի սիւնը
կ'իջնէր , ու խորանին դուռը կը
կայնէր , և Տէրը ʳՄովսէսին հետ
10 կը խօսէր ։ Եւ բոլոր ժողովուրդը
կը տեսնէր որ ամպի սիւնը խորանին
դուռը կը կայնի . ու բոլոր ժողո-
վուրդը կ'ելլէր՝ և ամէն մէկը իր
վրանին դուռը ˢերկրպագութիւն
11 կ'ընէր ։ Եւ ᵗՏէրը կը խօսէր Մով-
սէսին հետ դէմ առ դէմ , ինչպէս
որ մարդ մը իր բարեկամին հետ կը
խօսի . ու Մովսէս նորէն բանակը
կը դառնար . բայց ᵘանոր ծառան
Նաւէի որդին Յեսու պատանին՝
խորանէն չէր հեռանար ։
12 Եւ Մովսէս ըսաւ Տէրոջը . Նայէ՛
ᵛդուն կ'ըսես ինծի . Հանէ՛ աս ժո-
ղովուրդը . ու դուն ինծի չգիտցու-
ցիր՝ թէ ով ինծի հետ պիտի խըր-
կես . ու ըսիր . ʷՔեզ անունովդ
կը ճանչնամ , ու նաեւ իմ առջեւս
13 շնորհք գտար ։ Ուստի հիմա կ'ա-
ղաչեմ , ˣԹէ որ քու առջեւդ շը-
նորհք գտայ , ʸինծի ցուցո՛ւր ուրեմն
քու ճամբադ՝ որ ճանչնամ քեզ ,
անանկ որ քու առջեւդ շնորհք գըտ-
նեմ , ու ᶻմի՛տքդ բեր՝՝ որ աս ազ-
14 գը ᵃքու ժողովուրդդ է ։ Եւ անի-
կայ ըսաւ . ᵇԻմ ներկայութիւնս
ᶜքեզի հետ պիտի երթայ , ու քեզ
15 ᵈպիտի հանգստացընեմ ։ Եւ Մով-
սէս ըսաւ անոր . ᵉԹէ որ քու
ներկայութիւնդ մեր հետը չերթայ ,
16 մեզ աս տեղէն մի՛ հաներ ։ Քանզի
ինչով պիտի գիտցուի թէ ես ու
քու ժողովուրդդ քու առջեւդ շը-
նորհք գտանք . ᶠչէ՞ որ քու մեզի
հետ երթալովդ . այսպէս ᵍես ու
քու ժողովուրդդ երկրի երեսին վը-
րայ եղած բոլոր ժողովուրդներէն
պիտի զատուինք ։
17 Եւ Տէրը ըսաւ Մովսէսին . ʰԱս
բանն ալ պիտի ընեմ՝ որ դուն ը-
սիր , ինչու որ ⁱիմ առջեւս շնորհք
գտար , ու ես քեզ անունովդ կը
18 ճանչնամ ։ Եւ անիկայ ըսաւ .
Կ'աղաչեմ՝ ʲքու փառքդ ցուցո՛ւր
19 ինծի ։ Եւ Տէրը ըսաւ . ᵏԻմ բո-
լոր բարութիւնս քու առջեւդ պի-
տի անցընեմ , ու Տէրոջը անունը
քու առջեւդ պիտի կանչեմ , և որու
որ պիտի ողորմիմ՝ ˡկ'ողորմիմ՝ ու
որու վրայ որ պիտի գթամ՝ կը
20 գթամ ։ Ու ըսաւ . Դուն իմ երեսս
չես կրնար տեսնել . ինչու որ ᵐմարդ
21 չկրնար զիս տեսնել ու ապրիլ ։ Եւ
Տէրը ըսաւ . Ահա քովս տեղ մը
22 կայ , ու ժայռին վրայ կայնէ . Եւ
ըլլայ որ երբ իմ փառքս անցնելու
ըլլայ , քեզ ⁿժայռին խոռոչին մէջը
դնեմ , ու ᵒքեզ իմ ձեռքովս ծած-
23 կեմ , մինչեւ որ ես անցնիմ . Ետքը
իմ ձեռքս պիտի վերցընեմ , ու իմ
ետեւս պիտի տեսնես , բայց իմ ե-
րեսս ᵖպիտի չտեսնուի ։

## ԳԼ. ԼԴ

1 Մովսէս երկու նոր տախտակներ կը կոփէ ։ 5 Տէրը իր անունը կը հրատարակէ ։ 8 Մովսէս կ'աղաչէ որ Աստուած իրենց հետը երթայ ։ 10 Աստուած աս աղաչանքը կ'ընդունի , և ուխտ կ'ընէ անոնց հետ՝ քանի մը պատուիրանքները նորէն յիշելով ։ 28 Մովսէս քառասուն օր լեռը մնալէն ետեւ՝ անկից կ'իջնէ՝ նոր տախտակները իր հետը բերելով , 29 և իր երեսը լուսափայլ ըլլալուն համար՝ քօղով մը կը ծածկէ ։

1 Եւ Տէրը ըսաւ Մովսէսին . Քեզի
ᵃերկու քարէ տախտակներ կո-
փէ առջիններուն պէս . ᵇու ան
տախտակներուն վրայ պիտի գրեմ
առջի տախտակներուն վրայի խօս-
քերը՝ որ անոնք դուն կոտրտեցիր ։
2 Եւ առտուան համար պատրաստ
եղիր , ու առտուանց Սինայ լեռը
ելիր , և հոն ᶜլեռանը գլուխը առ-
3 ջեւս կայնէ ։ Ու մէկը ᵈպիտի չելլէ
քեզի հետ , և մէկը պիտի չտես-
նուի բոլոր լեռանը վրայ , ոչ ալ
աս լեռանը առջեւը ոչխար կամ
արջառ պիտի արածուի ։
4 Եւ առջիններուն պէս երկու քա-
րէ տախտակներ կոփեց . ու Մովսէս

Ն․ Ք․ ՉՔ․ 1491

ᵃ Գլ․ լբ․ 34։ լգ․ 11։
ᵇ բ Օր․ է․ 22։ Յես․ իդ․ 11։
ᶜ Գլ․ գ․ 8։
ᵈ Հմր 15․17։
* Եբր․ մէջը
ᵉ Գլ․ լբ․ 9։ լգ․ 9։ բ Օր․ թ․ 6, 13։
ᶠ Գլ․ իգ․ 21։ լբ․ 10։ Թուր․ ժզ․ 21․ 45։
ᵍ Թուր․ ժդ․ 1․ 39։
ʰ Եզե․ ժ․ 6։ բ Թագ․ ժթ․ 24։ դ Թագ․ իա․ 27։ դ Թագ․ ժթ․ 1։ Եսթ․ դ․ 1, 4։ Եզր․ թ․ 3։ Յոբ․ ա․ 20։ բ․ 12։ Ես․ լբ․ 11։ Եզեկ․ իդ․ 17, 23։ իզ․ 16։
ⁱ Հմր 3։
ʲ Թուր․ ժզ․ 45, 46։
ᵏ բ Օր․ ը․ 2։ Սաղ․ ճլթ․ 23։
ˡ Գլ․ իթ․ 42․ 43։
ᵐ բ Օր․ դ․ 29։ բ Թագ․ իա․ 1։
ⁿ Թուր․ ժզ․ 27։
ᵒ Գլ․ իե․ 22։ լա 18։ Սաղ․ ղթ․ 7։
ˢ Գլ․ դ․ 31։
ᵗ Ծն․ լբ․ 30։ Թուր․ ժբ․ 8։ բ Օր․ լդ․ 10։
ᵘ Գլ․ իգ․ 13։
ᵛ Գլ․ լբ․ 34։
ʷ Հմր 17։ Ծն․ ժը․ 19։ Սաղ․ ա․ 6։ Երեմ․ ա․ 5։ Յօհ․ ժ․ 14․ 15։ բ Տիմ․ բ․ 19։
ˣ Գլ․ լդ․ 9։
ʸ Սաղ․ իե․ 4։ իէ․ 11։ ձզ․ 11։ ճժթ․ 33։
ᶻ Եբր․ տես
ᵃ բ Օր․ թ․ 26․ 29։ Յովէլ․ բ․ 17։

Ն․ Ք․ ՉՔ․ 1491

ᵇ Գլ․ ժգ․ 21։ խ․ 34—38։ Ես․ կգ․ 9։
ᶜ բ Օր․ գ․ 20։ Յես․ իա․ 44։ իբ․ 4։ իգ․ 1։ Սաղ․ ղե․ 11։
ᵈ Հմր 3։ Գլ․ լգ․ 9։
ᵉ Թուր․ ժդ․ 14։
ᶠ Գլ․ լդ․ 10։ բ Օր․ դ․ 7, 34։ բ Թագ․ է․ 23։ գ Թագ․ ը․ 53։ Սաղ․ ճխէ․ 20։
ᵍ Ծն․ ժթ․ 21։ Յակ․ ե․ 16։
ʰ Հմր 12։
ⁱ Հմր 20։ ա Տիմ․ զ․ 16։
ʲ Գլ․ լգ․ 5, 6 7։ Երեմ․ լա 14։
ᵏ Հռով․ թ․ 15․ 16․ 18։
ˡ Տես Ծն․ լբ․ 30։ բ Օր․ ե․ 24։ Դատ․ զ․ 22։ ժգ․ 22։ Ես․ զ․ 5։ Յայտ․ ա․ 16․ 17։ Գլ․ իգ․ 10։
ᵐ Ես․ բ․ 21։
ⁿ Սաղ․ ղա․ 1, 4։
ᵒ Հմր 20։ Յօհ․ ա․ 18։

ᵃ Գլ․ լբ․ 16, 19։ բ Օր․ ժ․ 1։
ᵇ Հմր 28։ բ Օր․ ժ․ 2, 4։
ᶜ Գլ․ ժթ․ 20։ իդ․ 12։
ᵈ Գլ․ ժթ․ 12, 13, 21։

Ն. Ք. Վ.
1491

Գլ. լգ. 19։ Թուոց. ժդ. 17։
Թուոց. ժդ. 18։ Բ Մն. լ. 9։ Նեեմ. թ. 17։ Սաղ. ձզ. 15։ ճգ. 8։ ճժա. 4։ ճժբ. 4։ ճժզ. 5։ ճխե. 8։ Յովէլ. բ. 18։
Սաղ. լա. 19։ Հռովմ. բ. 4։
Սաղ. ծէ. 10։ ճը. 4։
Գլ. ի. 6։ Բ Օր. ե. 10։ Սաղ. ձզ. 15։ Երեմ. լբ. 18։ Դան. թ. 4։
Սաղ. ճգ. 3։ ճլ. 4։ Դան. թ. 9։ Եփե. դ. 32։ ա. Յովհ. ա. 9։
Գլ. իգ. 7, 21։ Յես. իդ. 19։ Յոբ. ժ. 14։ Միք. զ. 11։ Նաւ. ա. 3։
Գլ. դ. 31։
Գլ. լգ. 15, 16։
* Կամ՝ թէև
Գլ. լգ. 3։
Բ Օր. լբ. 9։ Սաղ. իը. 9։ լգ. 12։ հը. 62։ ղդ. 14։ Երեմ. ժ. 16։ Զաք. բ. 12։
Բ Օր. ե. 2։ իթ. 12, 14։
Բ Օր. դ. 32։ Բ Թագ. է. 23։ Սաղ. հէ. 14։ հը. 12։ ճխե. 20։
Բ Օր. ժ. 21։ Սաղ. ճխե. 6։ Ես. կդ. 3։
Բ Օր. ե. 32։ զ. 3։ 25։ ժբ. 28։ 32։ իը. 1։
Գլ. լգ. 2։

առտուանց կանուխ ելաւ, ու Տէ-
րոջը իրեն պատուիրածին պէս Սի-
նայ լեռը գնաց, և երկու քարէ
տախտակները իր ձեռքը առաւ։
5 Եւ Տէրը ամպով իջաւ, ու հոն ա-
նոր քովը կեցաւ. ու Տէրոջը ա-
6 նունը կանչեց։ Եւ Տէրը անոր առ-
ջևէն անցաւ, ու կանչեց. Տէր՝ Տէր
Աստուած՝ ողորմած ու բարերար՝
երկայնամիտ և առատ ողորմու-
թիւնով ու ճշմարտութիւնով,
7 Մինչև հազար ազգ ողորմութիւն
ընող, անօրէնութիւնը՝ յանցան-
քը ու մեղքը ներող, բայց յանցա-
ւորը ամենևին անպարտ չթողուր.
հայրերուն անօրէնութիւնը որդի-
ներուն վրայ՝ ու որդւոցը որդինե-
րուն վրայ՝ մինչև երրորդ ու չոր-
8 րորդ ազգը հատուցանելով։ Եւ
Մովսէս աճապարելով մինչև գե-
տինը խոնարհեցաւ ու երկրպագու-
9 թիւն ըրաւ, Ու ըսաւ. Ո՛վ Տէր՝
թէ որ հիմա քու առջևդ շնորհք
գտայ, կ'աղաչեմ՝ թող իմ Տէրս
մեր հետը երթայ. *ինչու որ՝ ա-
նիկայ խստապարանոց ազգ մըն է.
և ներէ՛ մեր անօրէնութիւնը ու մեր
մեղքերը, և մեզ քու ժառանգու-
թիւնդ ըրէ։
10 Եւ Տէրը ըսաւ. Ահա՛ ես ուխտ
մը կ'ընեմ. քու բոլոր ժողովուր-
դիդ առջևը անանկ սքանչելիքներ
պիտի ընեմ, որ բոլոր երկրի վրայ
ու բոլոր ազգաց մէջ չեղան. և բո-
լոր ժողովուրդը՝ որուն մէջն ես
դուն, պիտի տեսնեն Տէրոջը գոր-
ծը. քանզի ահաւոր է ան բանը՝
11 որ քեզի պիտի ընեմ։ Միտքդ
պահէ ինչ որ ես քեզի կը պատուի-
րեմ այսօր. ահա՛ պիտի վռնտեմ
քու առջևէդ Ամօրհացին՝ ու Քա-
նանացին՝ և Քետացին՝ ու Փերե-
զացին՝ և Խևացին ու Յեբուսացին։
12 Զգուշացի՛ր քու անձիդ, չըլլայ
որ քու երթալու երկրիդ բնակչացը
հետ ուխտ ընես, չըլլայ որ անիկայ
քու մէջտեղդ որոգայթ ըլլայ.
13 Հապա անոնց բագինները պիտի
կործանէք, ու անոնց կուռքերը
պիտի փշրէք, և անոնց անտառ-
14 ները պիտի կոտրտէք։ Ինչու որ
ուրիշ աստուծոյ երկրպագու-
թիւն պիտի չընես. քանզի Եհովան
Նախանձոտ կը կոչուի, Նա-
15 խանձոտ Աստուած է։ Չըլլայ որ
ան երկրին բնակչացը հետ ուխտ
ընես, և անոնք իրենց աստուած-
ներուն ետևէն երթալով՝ պոռնկու-
թիւն ըրած ատեննին՝ ու իրենց
աստուածներուն զոհ ըրած ատեն-
նին՝ քեզ կանչեն, ու դուն ա-
16 նոնց զոհէն ուտես։ Եւ չըլլայ որ
անոնց աղջիկներէն քու որդինե-
րուդ կին առնես, ու անոնց աղջիկ-
ները իրենց աստուածներուն ե-
տևէն երթալով՝ պոռնկութիւն ը-
րած ատեննին՝ քու որդիներուդ
ալ պոռնկութիւն ընել տան՝ իրենց
աստուածներուն ետևէն [illegible]-
17 լով։ Քեզի ձուլածոյ աստուած-
ներ պիտի չշինես։
18 Բաղարջակերաց տօնը պիտի
պահես. Աբիբ ամսուն որոշ ժա-
մանակին մէջ քեզի պատուիրածիս
պէս՝ եօթը օր բաղարջ պիտի ու-
տես. ինչու որ Աբիբ ամսուն մէջ
Եգիպտոսէն ելար։
19 Ամէն մօրը արգանդը բացողը իմս
է. և քու անասուններուդ մէջ
ամէն արու առջինեկը՝ թէ՛ արջառ
20 ըլլայ և թէ ոչխար, իմս է։ Բայց
էշուն առջինեկը գառնուկով պի-
տի փրկես. և թէ որ չես փրկեր, ան
ատենը անոր վիզը պիտի կտրես։
Քու որդւոցդ ամէն առջինեկը պի-
տի փրկես. ու մէկը իմ առջևս
ձեռնունայն չերևնայ։
21 Վեց օր պիտի գործես, ու
եօթներորդ օրը հանգստանաս. թէ՛
վարուցան ընելու և թէ՛ հնձելու
ատենը պիտի հանգստանաս։
22 Եւ շաբաթներուն՝ այսինքն ցո-
րենի հունձքին երախայրիներուն
տօնը, ու տարուոյն վերջը՝ պտուղ-
ները ժողվելու տօնը պիտի ըրը-
նես։
23 Ձեր ամէն արու զաւակը տարին
երեք անգամ Իսրայէլի Աստուծոյն
Եհովայ Տէրոջը առջևը պիտի երև-
24 նայ։ Ինչու որ քու առջևէդ
ազգերը պիտի վռնտեմ, և քու
սահմաններդ պիտի ընդարձակեմ.
ու տարին երեք անգամ քու Տէր
Աստուծոյդ առջևը երևնալու ելած
ատենդ մէկը քու երկրիդ պիտի
չցանկայ։
25 Իմ †զոհերուս արիւնը խմո-
րեալ հացով պիտի չթափես, ու
զատկի տօնին զոհը մինչև առտու
26 պիտի չմնայ։ Քու երկրիդ երա-
խայրիներուն առջինները քու Տէր
Աստուծոյդ տունը պիտի բերես։
Ուլը իր մօրը կաթին մէջ պիտի
չեփես։
27 Եւ Տէրը ըսաւ Մովսէսին. Գրէ՛
ասս խօսքերը. ինչու որ աս խօսքե-
րուն համեմատ քեզի հետ ու Իս-
28 րայէլին հետ ուխտ ըրի։ Եւ ա-
նիկայ հոն կեցաւ Տէրոջը հետ

Ն. Ք. Վ.
1491

Թուոց. իե. 2։ ա Կոր. ժ. 27։
Սաղ. ճզ. 28։ ա Կոր. ը. 4, 7, 10։
Բ Օր. է. 8։ գ Թագ. ժա. 2։ Եզր. թ. 2։ Նեեմ. ժգ. 25։
Թուոց. իե. 1, 2։ գ Թագ. ժա. 4։
Գլ. լբ. 8։ Ղև. ժթ. 4։
Գլ. ժբ. 15։ իգ. 15։
Գլ. ժգ. 4։
Գլ. ժգ. 2, 12։ իբ. 29։ Եզեկ. խդ. 30։ Ղուկ. բ. 23։
Գլ. ժգ. 13։ Թուոց. ժը. 15։
Գլ. իգ. 15։ Բ Օր. ժզ. 16։ ա Թագ. թ. 7, 8։ բ Թագ. իգ. 24։
Գլ. ի. 9։ իգ. 12։ Ղև. լե. 2։ Բ Օր. ե. 12, 13։ Ղուկ. ժգ. 14։
Գլ. իգ. 16։ Բ Օր. ժզ. 10, 13։
Գլ. իգ. 14, 17։ Բ Օր. ժզ. 16։
Գլ. լգ. 2։ Ղև. ժը. 24։ Բ Օր. է. 1։ Սաղ. հը. 55։ ձ. 8։
Բ Օր. ժբ. 20։ ժթ. 8։
Ծն. լե. 5։ Բ Մն. ժէ. 10։ Առակ. ժզ. 7։ Գործ. ժը. 10։
Գլ. իգ. 18։
† Եբր. զոհերուս արիւնը խմորեալ հացի վրայ պիտի չթափես։
Գլ. ժբ. 10։
Գլ. իգ. 19։ Բ Օր. իզ. 2, 10։

Գլ. իգ. 32։ Բ Օր. է. 2։ Դատ. բ. 2։ Գլ. իգ. 33։ Գլ. իգ. 24։ Բ Օր. ժբ. 3։ Դատ. բ. 2։ Բ Օր. է. 5։ ժբ. 2։ Դատ. զ. 25։ Բ Թագ. ժը. 4։ իգ. 14։ Բ Մն. լա. 1։ լդ. 3, 4։ Գլ. ի. 3, 5։ Ես. թ. 6։ ծէ. 15։ Գլ. ի. 5։ Հմր 12։ Բ Օր. լա. 16։ Դատ. բ. 17։ Երեմ. գ. 9։ Եզեկ. զ. 3։
Գլ. իգ. 19։ Բ Օր. ժդ. 21։ Հմր 10։ Բ Օր. դ. 13։ լա. 9։ Գլ. իգ. 18։ Բ Օր. թ. 9, 18։

Ն. Ք. ԴՃ.
1491

ժ Հմր 1. Գլ. լա. 18. լբ. 16. բ Օր. դ. 13. ժ. 2, 4.
ի Գլ. լբ. 15.
կ Մատ. ժէ. 2. բ Կոր. գ. 7, 13.
յ Գլ. իդ. 3.
ն բ Կոր. գ. 13.
մ բ Կոր. գ. 16.
շ Գլ. լդ. 32.
ո Գլ. ի. 9. լա. 14, 15. Ղև. իգ. 3. Թուոց. ժե. 32, եւ. բ Օր. ե. 12. Ղու. ժգ. 14.
չ Գլ. ժզ. 23.
պ Գլ. իե. 1, 2.
ջ Գլ. իե. 2.

քառասուն օր ու քառասուն գիշեր .
ոչ հաց կերաւ՝ ոչ ալ ջուր խմեց .
և [ժ] տախտակներուն վրայ ուխտին
խօսքերը գրեց՝ այսինքն տասը պա-
տուիրանքները ։
29 Եւ եղաւ որ երբ Մովսէս Սինայ
լեռնէն իջաւ, [ի] վկայութեան երկու
տախտակները Մովսէսին ձեռքն էր
լեռնէն իջած ատենը , ու Մովսէս
[կ] իր երեսին մորթը լուսափայլ ըլ-
լալը չէր գիտեր՝ երբոր Տէրը իր հե-
30 տը խօսեցաւ ։ Եւ Ահարոն ու Իսրա-
յէլի բոլոր որդիքը տեսան Մովսէ-
սը , և ահա անոր երեսին մորթը
լուսափայլ էր , ու անոր մօտենա-
31 լու վախցան ։ Եւ Մովսէս կանչեց
անոնք , ու Ահարոն և ժողովքին
բոլոր իշխանները դարձան անոր , ու
32 Մովսէս խօսեցաւ անոնց հետ ։ Եւ
անկէ ետքը Իսրայէլի բոլոր որդիքը
մօտեցան . [յ] ու պատուիրեց անոնց
ամէն ինչ որ Տէրը խօսեր էր իրեն
33 հետ Սինայ լեռը ։ Եւ Մովսէս
մինչև անոնց՝ հետ խօսիլը լմնցնելը՝
34 [ն] իր երեսը քող դրաւ ։ Բայց [մ] Մով-
սէս Տէրոջը առջևը՝ անոր հետ խօ-
սելու մտած ատենը՝ մինչև դուրս
ելլելը քողը կը վերցնէր . ետքը
դուրս կ'ելլէր ու իրեն պատուի-
րուածը Իսրայէլի որդւոցը կը խօ-
35 սէր ։ Եւ Իսրայէլի որդիքը Մով-
սէսին երեսը կը տեսնէին , որ Մով-
սէսին երեսին մորթը լուսափայլ
էր . ու Մովսէս իր երեսը քողով կը
ծածկէր՝ մինչև Անոր հետ խօսելու
մտնելը ։

## ԳԼ. ԼԵ

1 Շաբաթը պահելու պատուէրը ։ 4 Խորանին շինութեանը համար տրուելու ընծաները ։ 20 Ժողովուրդին ընծայ բերելու յօժարասրտութիւնը ։ 30 Բեսելիէլը ու Ողիաբը խորանին շինութեանը համար ճարտարապետ կ'ընտրուին ։

1 Եւ Մովսէս ժողվեց Իսրայէլի որ-
դւոցը բոլոր ժողովքը , ու ըսաւ
անոնց . [շ] Ասոնք են այն բաները որ
Տէրը պատուիրեց որ անոնք ընէք ։
2 [ո] Վեց օր գործ պիտի գործուի ,
բայց եօթներորդ օրը սուրբ պիտի
ըլլայ ձեզի՝ այսինքն հանգստութեան
շաբաթ Տէրոջը . այն օրը գործ
3 գործողը պիտի մեռցուի . [չ] Շա-
բաթ օրը ձեր բոլոր բնակարան-
ներուն մէջ կրակ պիտի չվառէք ։
4 Եւ Մովսէս խօսեցաւ Իսրայէլի
որդւոցը բոլոր ժողովքին՝ ըսելով .
[պ] Տէրոջը պատուիրած բանը աս է ,
5 որ կ'ըսէ . Ձեր մէջէն ընծայ առէք
Տէրոջը . [ջ] ով որ սրտով կը յօժարի՝
թող անիկայ Տէրոջը ընծան բերէ ,
6 ոսկի՝ ու արծաթ՝ և պղինձ , Ու կա-
պուտակ՝ և ծիրանեգոյն՝ ու կրկ-
նակի կարմիր՝ և բարակ քթան՝ ու
7 այծի մազ . Եւ կարմիր ներկուած
խոյի մորթեր՝ ու թէհաշի մորթեր՝
8 և Սատիմի փայտեր , Ու լոյսի համար
եղ և [ռ] օծման եղի համար ու ա-
նուշահոտ խունկի համար համեմ-
9 ներ , Եւ եղնգնաքարեր՝ ու եփու-
տին համար և լանջապանակին հա-
10 մար զամուելու քարեր ։ Եւ [ս] ձեր
մէջը ամէն սրտով իմաստուն եղող-
ները թող գան , ու Տէրոջը բոլոր
11 պատուիրած բաները շինեն . [վ] Խո-
րանը՝ անոր վրանը՝ ու անոր ծած-
կոցը՝ անոր ճարմանդները՝ ու անոր
տախտակները՝ անոր նիգերը՝ անոր
սիւները՝ և անոր խարիսխները ,
12 [տ] Տապանակը՝ ու անոր ձողերը՝ քա-
ւութիւնը՝ ու ծածկող վարագոյ-
13 րը , [ր] Սեղանը՝ ու անոր նիգերը՝ ու
անոր բոլոր անօթները՝ [ց] և առա-
14 ջաւորութեան հացը . Եւ [ւ] լոյսի
աշտանակը՝ ու անոր գործիքները՝
և անոր ճրագները՝ ու լոյսի եղը ,
15 [փ] Եւ խունկին սեղանը՝ ու անոր
ձողերը՝ [ք] ու օծման եղը՝ և [օ] ա-
նուշահոտ խունկը՝ ու խորանին
16 դրանը վարագոյրը , [ֆ] Ողջակէ-
զին սեղանը՝ ու անոր պղնձէ ցան-
ցաձեւ կասկարան՝ անոր ձողե-
րը՝ ու անոր բոլոր գործիքները՝
աւազանը ու անոր խարիսխը ,
17 [ա] Սրահին վարագոյրները՝ անոր
սիւները ու խարիսխները՝ և սրա-
18 հին դրանը վարագոյրը , Խորա-
նին ցիցերը՝ ու սրահին ցիցերը՝ ու
19 անոնց չուանները , [բ] Պաշտօնին լա-
թերը՝ սրբարանին մէջ պաշտելու
համար , և Ահարոն քահանային
սուրբ զգեստները՝ ու անոր որդւոցը
զգեստները , որ քահանայութիւն
ընեն ։
20 Եւ Իսրայէլի որդւոցը բոլոր ժո-
ղովքը Մովսէսին առջևէն գացին ։
21 Եւ ամէն [գ] յօժարասիրտ եղողը՝ ու
ամէն բոլոր հոգիով կամեցողը ե-
կան , ու ժողովքի խորանին գործին
համար՝ և անոր բոլոր պաշտօնին
համար՝ ու սուրբ զգեստներուն հա-
22 մար՝ Տէրոջը ընծան բերին ։ Եւ
եկան էրիկ մարդիկ ու կնիկներ՝
որչափ որ սրտով կամեցող կային ,
ու ճարմանդներ և օղեր ու մատնի-
ներ և լանջազեղ *կամարներ՝ ամէն
տեսակ ոսկի զարդեր բերին . այս-
պէս ամէն ընծայ բերողը՝ ոսկի ըն-
23 ծայ բերաւ Տէրոջը ։ Եւ [դ] ամէն ա-
մէնը՝ որուն քովը կը գտնուէր կա-
պուտակ՝ ու ծիրանեգոյն՝ և կրկնա-
կի կարմիր՝ ու բարակ քթան՝ և
այծի մազ՝ ու կարմիր ներկուած
խոյի մորթեր՝ և թէհաշի մորթեր ,
24 բերին ։ Ամէն արծաթ ու պղինձ
ընծայ տուողը՝ Տէրոջը ընծան բե-
րաւ . և որուն քով որ պաշտօնին

Ն. Ք. ԴՃ.
1491

ռ Գլ. իե. 6.
ս Գլ. լա. 6.
վ Գլ. իզ. 1, 2, եւ.
տ Գլ. իե. 10, եւ.
ր Գլ. իե. 23.
ց Գլ. իե. 30. Ղև. իդ. 5, 6.
ւ Գլ. իե. 31, եւ.
փ Գլ. լ. 1.
ք Գլ. լ. 23.
օ Գլ. լ. 34.
ֆ Գլ. իէ. 1.
ա Գլ. իէ. 9.
բ Գլ. լա. 10. լթ. 1, 41. Թուոց. դ. 5, 6, եւ.
գ Հմր 5, 22, 26, 29. Գլ. իե. 2. լզ. 2. ա Մն. իը. 2, 9. իթ. 9. Եզր. է. 27. բ Կոր. ը. 12. թ. 7.
* կամ՝ մանեակներ՝
դ ա Մն. իթ. 8.

Ն․ Ք․ ՎՔ․
1491

յ Գլ․ իը․ 3․ լա 6 ․ ԼԴ․ 1 ․ Դ Թագ․ իգ․ 7 ․ Առակ․ լա․ 19, 22, 24 ․

ամէն գործին ղէբրանէ Սատիմի փայ-
25 տեր կը գտնուէր՝ բերաւ ։ Եւ ա-
մէն յ սրտով իմաստուն եղող կնիկ-
ները իրենց ձեռքերովը մանեցին ,
ու իրենց մանած կապուտակը՝ ծի-
րանեգոյնը՝ կրկնակի կարմիրը ու
26 բարակ քթանը բերին ։ Եւ բոլոր
սրտով փափաքող և յաջողակու-
թիւն ունեցող կնիկները այծի
27 մաղ մանեցին ։ Եւ ˢիշխանները՝
եղնգնաքարեր , ու եփուտին և
լանջապանակին համար դամուելու
28 քարեր բերին , Նաև լոյսի համար՝
ու օծման եղի համար՝ և անուշահոտ
խունկի համար՝ ՚համեմներ ու եղ ։
29 Իսրայէլի որդիքը ˢյօժարակամ ըն-
ծայ բերին Տէրոջը , ամէն մարդ ու
կնիկ՝ որոնք յօժարութիւն ունէին
բերելու ամէն կերպ գործի համար՝
որ Տէրը Մովսէսին ձեռքովը պա-
տուիրեց որ շինուի ։

ս Մն․ իթ․ 6 ․ Եզր․ բ․ 68 ․

ւ Գլ․ լ․ 23 ․ ո Հմր 21 ․ ա Մն․ իթ․ 9 ․

30 Եւ Մովսէս ըսաւ Իսրայէլի որ-
դւոցը ․ Ահա ՚Տէրը Յուդայի ցե-
ղէն Ովրի որդւոյն Ուրիին որդին
31 Բեսելիէլը անունովը կանչեց ․ Ու
Աստուծոյ Հոգիովը՝ իմաստութիւ-
նով՝ հանճարով՝ և գիտութիւնով՝
ու ամէն կերպ ճարտարութիւնով
32 լեցուց զանիկայ , Որ վարպետի
գործեր հնարելով՝ ոսկիի ու արծա-
33 թի և պղնձի վրայ բանի ․ Եւ գա-
մելու համար քարեր բանի , ու ա-
մէն կերպ վարպետի գործ ընելու
34 համար փայտեր քանդակէ ։ Եւ
անոր սրտին մէջ սորվեցընելու կա-
րողութիւնը դրաւ , անորն ալ՝ ու
ˢԴանի ցեղէն Աքիսամային որ-
35 դւոյն Ողիաբինն ալ ։ Սրտի ի-
մաստութիւնով լեցուց զանոնք ,
որ ամէն տեսակ գործ գործող և
հնարքներ հնարող քանդակագործի
ու արուեստաւորի ամէն գործը ,
նաև կապուտակի՝ ու ծիրանեգոյնի՝
և կրկնակի կարմիրի՝ և բարակ քը-
թանի վրայ նկարագործողի և ոս-
տայնանկի գործը ընեն ։

ւ Գլ․ լա․ 2 , ա ․

ղ Գլ․ լա․ 6 ․ Ղ Հմր 31 ․ Գլ․ լա․ 3 , 6 ․ Գ Թագ․ է․ 14 ․ Բ Մն․ բ․ 14 ․ Ես․ իը․ 26 ․

## ԳԼ․ ԼԶ

1 Ընծաները վարպետներուն կը յանձնեն ։ 5 Մովսէս կը պատուիրէ որ ժողովուրդը ընծայ բերելէն դադարի ։ 8 Քերովբէներով նկարուած վարագուրները ։ 14 Այծի մազէ վարագուրները ։ 19 Մորթէ ծածկոցները ։ 20 Տախտակները իրենց խարիսխներովը ։ 31 Նիգերը ։ 35 Սրբարանին վարագոյրը ։ 37 Դրան վարագոյրը ։

ա Գլ․ իը․ 3 ․ լա․ 6 ․ լե․ 10 , 35 ․ բ Գլ․ իե․ 8 ․

1 Ու անենը Բեսելիէլ ու Ողիաբ և
ամէն ˢսրտով իմաստուն եղողը՝
որոնց որ Տէրը իմաստութիւն ու
հանճար տուաւ ᵇսրբարանին պաշ-
տօնին ամէն կերպ գործքերը ընել
գիտնալու համար , Տէրոջը բոլոր
2 պատուիրածին պէս գործեցին ։ Եւ
Մովսէս կանչեց Բեսելիէլը ու Ո-
ղիաբը և ամէն սրտով իմաստուն
եղողը՝ որուն սրտին մէջ Տէրը ի-
մաստութիւն դրաւ , ˢայնինչ ան
ամէնը՝ ˢորուն սիրտը կը փափա-
քէր բանելու համար գործի մօտե-
3 նալու ։ Եւ անոնք առին Մովսէսէն
բոլոր ընծաները՝ որ Իսրայէլի որդի-
քը ˢբերին սրբարանին պաշտօնին
գործը ˢանանցմով ընելու համար ։
Ու անոնք տակաւին ամէն առտու
կամաւոր ընծաներ կը բերէին ա-
նոր ։
4 Եւ սրբարանին ամէն գործը բա-
նող բոլոր իմաստուն մարդիկը՝
ամէն մէկը իր ըրած գործէն եկան ․
5 Եւ խօսեցան Մովսէսին՝ ըսելով ․
ᵉԺողովուրդը աւելի կը բերէ՝ քան
որչափ պէտք էր Տէրոջը շինելու
պատուիրած բաներուն գործին
6 համար ։ Եւ Մովսէս պատուիրեց
քարոզ կարդալ բանակին մէջ՝ ը-
սելով ․ Ալ ոչ մարդ՝ ոչ ալ կնիկ
գործ մը գործեն սրբարանին ըն-
ծային համար ։ Այսպէս ժողո-
վուրդը ընծայ բերելէն դադարեցան ։
7 Եւ ան նիւթերը՝ բոլոր գործը շի-
նելու համար բաւական էր իրենց ,
ու աւելի ալ ։
8 ՚Եւ խորանին գործը բանողներէն
բոլոր սրտով իմաստուն եղողները՝
մանուած բարակ քթանէն՝ ու
կապուտակէն՝ և ծիրանեգոյնէն՝ ու
կրկնակի կարմիրէն տասը վարագոյր
շինեցին ․ զանոնք վարպետի գործ
9 քերովբէներով շինեցին ․ Մէկ վա-
րագոյրին երկայնութիւնը քսան-
ութը կանգուն՝ ու մէկ վարա-
գոյրին լայնութիւնը չորս կանգուն
էր ․ ամէն վարագոյրներուն չափը
10 մէկ էր ։ Եւ հինգ վարագոյրը ի-
րարու կցեց , ու միւս հինգ վարա-
11 գոյրն ալ իրարու կցեց ։ Եւ կը-
ցուածքին ծայրի մէկ վարագոյրին
եզերքին վրայ կապուտակէ օղակ-
ներ շինեց ․ մէկալ կցուածքին
ծայրի վարագոյրին եզերքն ալ
12 անանկ ըրաւ ։ ᵉՄէկ վարագոյրին
վրան յիսուն օղակ շինեց , և մէկալ
կցուածքին վրան եղած վարագոյ-
րին ծայրն ալ յիսուն օղակ շինեց ․
13 օղակները դիմացէ դիմաց էին ։ Եւ
յիսուն հատ կարթաձև ոսկի ճար-
մանդներ շինեց ․ ու վարագոյրները
ճարմանդներով իրարու հետ կոճ-
կեց , անանկ որ խորանը մէկ եղաւ ։
14 ՇԵւ խորանին վրայի վրանին
համար այծի մազէ վարագոյրներ
շինեց ․ զանոնք տասնումէկ վարա-
15 գոյր շինեց ։ Մէկ վարագոյրին
երկայնութիւնը երսուն կանգուն՝
ու մէկ վարագոյրին լայնութիւնը
չորս կանգուն ըլլալով՝ տասնումէկ
16 վարագոյրին չափը մէկ էր ։ Եւ

Ն․ Ք․ ՎՔ․
1491

գ Գլ․ լե․ 2 , 26 ․ աՄն․ իթ․ 5 ․

դ Գլ․ լե․ 27 ․

ե Բ Կոր․ ը․ 2 , 3 ․

զ Գլ․ իզ․ 1 ․

է Գլ․ իզ․ 5 ․

ը Գլ․ իզ․ 7 ․

Ն.Ք.Գ.Ք. 1491

հինգ վարագոյրները զատ՝ ու վեց
17 վարագոյրները զատ կցեց ։ Եւ կը-
ցուածքին ծայրի վարագոյրին ե-
զերքին վրայ յիսուն օղակ՝ ու մէ-
կալ կցուածքին ծայրէ վարագու-
րին եզերքին վրայ յիսուն օղակ
18 շինեց ։ Եւ յիսուն հատ կարթա-
ձեւ պղինձ ճարմանդներ շինեց, որ
Բ Գլ. Իզ. 14։
19 վրանը կոճկէ, ու մէկ ըլլայ ։ [բ] Եւ
վրանին համար կարմիր ներկուած
խոյի մորթերէ ծածկոց մը՝ ու ա-
նոր վրայէն թէհաշի մորթերէ
ծածկոց մը շինեց ։
Գ Գլ. Իզ. 15։
20 [գ] Եւ խորանին համար Սատիմ
փայտէ կանգնած տախտակներ շի-
21 նեց ։ Մէկ տախտակին երկայնու-
թիւնը տասը կանգուն՝ և մէկ տախ-
տակին լայնութիւնը մէկ ու կէս
22 կանգուն էր ։ Ամէն մէկ տախտակ
իրարու քով երկերկու ագուցիկ
ծայր ունէր. խորանին բոլոր տախ-
23 տակներուն ասանկ ըրաւ ։ Եւ խո-
րանին տախտակները անանկ շինեց.
դէպ 'ի հարաւ՝ այսինքն հարաւային
կողմին համար քսան տախտակ
24 շինեց ։ Եւ քսան տախտակներուն
տակը՝ քառասուն արծաթ խարիսխ,
այսինքն մէկ տախտակին տակը իր
երկու ծայրը ընդունելու համար եր-
կու խարիսխ՝ ու մէկալ տախտակին
տակը իր երկու ծայրը ընդունելու
25 համար երկու խարիսխ շինեց ։ Եւ
խորանին մէկալ կողմին համար՝
դէպ 'ի հիւսիս քսան տախտակ շի-
26 նեց. Ու անոնց քառասուն արծաթ
խարիսխ, մէկ տախտակին տակը
երկու խարիսխ՝ ու մէկալ տախտա-
կին տակը երկու խարիսխ շինեց ։
27 Եւ խորանին ետեւի կողմին համար
դէպ 'ի արեւմուտք՝ վեց տախտակ
28 շինեց. Եւ խորանին ետեւի կողմի
անկիւններուն համար՝ երկու տախ-
29 տակ շինեց. Եւ անոնք վարէն կը
միանային, ու վերէն ալ մէկ օղա-
կով մէկտեղ կը միանային. երկու-
քին ալ երկու անկիւններուն ասանկ
30 ըրաւ ։ Այսպէս ութը տախտակ է-
ին. ու անոնց արծաթ խարիսխները
տասնուվեց խարիսխ էին, ամէն մէկ
տախտակին տակը երկերկու խա-
Դ Գլ. Իզ. 26։
31 րիսխ ըլլալով ։ Եւ [դ]Սատիմ փայ-
տէ նիգեր շինեց. խորանին մէկ
քովի տախտակներուն համար հինգ՝
32 Ու խորանին մէկալ քովի տախ-
տակներուն համար հինգ նիգ՝ և խո-
րանին դէպ 'ի արեւմուտք եղած ե-
տեւի կողմի տախտակներուն համար
33 հինգ նիգ ։ Եւ մէջտեղի նիգը
անանկ շինեց, որ տախտակներուն
մէջտեղէն մէկ ծայրէն մինչեւ մէկալ
34 ծայրը անցնի ։ Եւ տախտակները
ոսկիով պատեց. ու անոնց օղակ-
ները ոսկիէ շինեց՝ նիգերուն տեղը

ըլլալու համար. նիգերն ալ ոսկիով
պատեց ։
35 [ե]Եւ կապուտակէ՝ ու ծիրանե- Ե Գլ. Իզ. 31։
գոյնէ՝ և կրկնակի կարմիրէ՝ ու մա-
նուած բարակ քթանէ շինեց վա-
րագոյրը, վարպետի գործ քերով-
36 բէներով շինեց անիկայ ։ Եւ Սա-
տիմ փայտէ չորս սիւն շինեց անոր.
ու ոսկիով պատեց զանոնք. անոնց
ճանկերը ոսկի էին. և անոնց չորս
37 արծաթ խարիսխ ձուլեց ։ Եւ խո-
րանին դրանը համար կապուտակէ՝
ու ծիրանեգոյնէ՝ և կրկնակի կար-
միրէ՝ ու մանուած բարակ քթանէ
նկարագործ [զ]դրան վարագոյր մը Զ Գլ. Իզ. 36։
38 շինեց. Եւ անոր հինգ սիւները՝ ու
անոնց ճանկերը շինեց. և անոնց
խոյակները՝ ու անոնց կապերը ոս-
կիով պատեց. և անոնց հինգ խա-
րիսխները պղնձէ էին ։

## ԳԼ. ԼԷ

1 Տապանակը ։ 6 Քաւութիւնը և քերովբէ-
ները ։ 10 Սեղանը իր անօթներովը ։ 17 Աշ-
տանակը իր ճրագներովը ու գործիքներովը ։
25 Խունկի սեղանը ։ 29 Օծման եղը ու ա-
նուշահոտ խունկը ։

1 Եւ Բեսելիէլ [ա]Սատիմ փայտէ շի- Ա Գլ. Իե. 10։
նեց տապանակը. անոր երկայ-
նութիւնը երկուք ու կէս կանգուն՝
ու անոր լայնութիւնը մէկ ու կէս
2 կանգուն էր ։ Եւ ներսէն ու դուր-
սէն զուտ ոսկիով պատեց անիկայ.
և անոր բոլորտիքը ոսկի շրջանակ
3 մը շինեց ։ Եւ անոր չորս անկիւն-
ներուն համար չորս ոսկի օղակներ
ձուլեց, այսինքն՝ անոր մէկ կողմէն
երկու օղակ՝ ու մէկալ կողմէն երկու
4 օղակ ։ Եւ Սատիմ փայտէ ձողեր
շինեց, ու զանոնք ոսկիով պատեց ։
5 Եւ ձողերը տապանակին քովերը
եղած օղակներուն անցուց, որ ա-
նոնցմով տապանակը վերցուի ։
6 Եւ [բ]քաւութիւնը զուտ ոսկիէ Բ Գլ. Իե. 17։
շինեց. անոր երկայնութիւնը եր-
կուք ու կէս կանգուն՝ ու անոր
լայնութիւնը մէկ ու կէս կանգուն
7 էր ։ Եւ երկու ոսկիէ քերովբէներ
շինեց. զանոնք կռածոյ շինեց քա-
8 ւութիւնին երկու ծայրերէն. Մէկ
քերովբէն մէկ քովի ծայրէն՝ ու մէ-
կալ քերովբէն մէկալ քովի ծայրէն
ըլլալով, քերովբէները քաւութիւ-
9 նին երկու ծայրերէն շինեց ։ Եւ
քերովբէները իրենց թեւերը վերէն
տարածելով՝ իրենց թեւերովը քա-
ւութիւնը կը ծածկէին, ու անոնց
երեսները իրարու կը նայէին. քերով-
բէներուն երեսները քաւութիւնին
վրայ էին ։
10 Եւ [գ]սեղանը Սատիմ փայտէ շի- Գ Գլ. Իե. 23։
նեց. անոր երկայնութիւնը երկու
կանգուն, ու լայնութիւնը մէկ
կանգուն, և բարձրութիւնը մէկ ու

Ն․ Ք․ ԶՔ․ 1491

11 կէս կանգուն էր ։ Եւ զուտ ոսկի-
ով պատեց զան․ ու անոր բոլորտի-
12 քը ոսկի շրջանակ մը շինեց ։ Եւ
անոր բոլորտիքն ալ չորս մատնա-
չափ սպառուած մը՝ ու սպառուա-
ծին բոլորտիքը ոսկի շրջանակ մը
13 շինեց ։ Եւ չորս ոսկի օղակ ձուլեց
անոր համար, ու օղակները անոր
չորս ոտքերուն քովը չորս անկիւն-
14 ները դրաւ ։ Օղակները սպառուա-
ծին քովը ըլլալով՝ սեղանը վերցը-
նելու համար ձողերուն տեղուանքն
15 էին ։ Եւ սեղանը վերցընելու հա-
մար ձողերը Սատիմի փայտէ շինեց,
16 ու զանոնք ոսկիով պատեց ։ Եւ
սեղանին վրայ եղած անօթները,
անոր [Գ] սկուտեղները ու խնկամաններ-
ները՝ և նուէր մատուցանելու գա-
ւաթները ու բաժակները զուտ ոս-
կիէ շինեց ։

Գ Գլ․ ԻԵ․ 29։

17 Եւ [Ե] աշտանակը զուտ ոսկիէ շի-
նեց․ կռածոյ շինեց աշտանակը․
անոր բունը՝ ու ճիւղերը՝ անոր
սկահակները՝ գնդակները՝ ու ծա-
18 ղիկները իրմէն էին ։ Եւ անոր քո-
վերէն վեց ճիւղեր կ՚ելլէին․ աշ-
տանակին մէկ քովէն իրեք ճիւղ՝
ու աշտանակին մէկալ քովէն ի-
19 րեք ճիւղ․ Մէկ ճիւղին վրայ նը-
շաձև իրեք սկահակ՝ գնդակով ու
ծաղիկով, և մէկալ ճիւղին վրայ
նշաձև իրեք սկահակ՝ գնդակով
ու ծաղիկով․ աշտանակէն ելած
20 վեց ճիւղերը սանկ էին ։ Եւ
աշտանակին վրայ գնդակներով
ու ծաղիկներով չորս նշաձև բս-
21 կահակ կային ։ Եւ անկէ ելած
վեց ճիւղերուն նայելով՝ երկու
ճիւղին տակը իրմէն գնդակ մը՝ ու
երկու ճիւղին տակը իրմէն գնդակ
մը՝ և երկու ճիւղին տակը իրմէն
22 գնդակ մը կային ։ Անոնց գնդակ-
ները ու ճիւղերը իրմէն էին․ ամէ-
նը մէկ՝ զուտ ոսկիէ կռածոյ էին ։
23 Եւ անոր եօթը ճրագները՝ և ունե-
լիները՝ ու անոր բազմականները
24 զուտ ոսկիէ շինեց ։ Քանքար մը
բոլոր գործիքներովը մէկ տաղանդ
զուտ ոսկիէ շինեց ։

Ե Գլ․ ԻԵ․ 31։

25 [Հ] Խունկի սեղանը Սատիմի փայտէ
շինեց․ անոր երկայնութիւնը կան-
գուն մը՝ ու անոր լայնութիւնը
կանգուն մը՝ քառակուսի ըլլալով,
և անոր բարձրութիւնը երկու կան-
գուն էր․ անոր եղջիւրները իրմէն
26 էին ։ Եւ անոր վրան՝ ու շուրջա-
նակի քովերը՝ և անոր եղջիւրները
զուտ ոսկիով պատեց․ և բոլոր-
տիքը ոսկի շրջանակ մը շինեց ա-
27 նոր ։ Եւ անոր համար՝ անոր շըր-
ջանակին տակէն՝ անոր երկու քո-
վերը երկու կողմէն երկու ոսկի օ-
ղակներ շինեց, որ անոնք ձողերուն

Հ Գլ․ Լ․ 1։

Ն․ Ք․ ԶՔ․ 1491

տեղուանքը ըլլալով՝ անոնցմով
28 վերցուի ։ Եւ ձողերը Սատիմի փայ-
տէ շինեց, ու զանոնք ոսկիով պա-
29 տեց ։ Եւ [Ե] սուրբ օծման եղը՝ ու
մաքուր անուշահոտ խունկը շինեց
իւղագործի արհեստով ։

Ե Գլ․ Լ․ 23, 34։

## ԳԼ․ ԼԸ

1 Ողջակէզի սեղանը ։ 8 Պղնձէ աւազանը ։ 9 Սրահը ։ 21 Ժողովուրդին ընծայած բաներուն գումարը ։

1 Եւ [Ա] ողջակէզի սեղանը Սատիմի
փայտէ շինեց․ անոր երկայնու-
թիւնը հինգ կանգուն՝ ու անոր
լայնութիւնը հինգ կանգուն՝ քա-
ռակուսի էր, և անոր բարձրու-
2 թիւնը իրեք կանգուն ։ Եւ անոր
եղջիւրները չորս անկիւններուն վը-
րայ շինեց․ անոր եղջիւրները իրմէն
3 էին․ ու պղնձով պատեց զան ։ Եւ
սեղանին բոլոր գործիքները՝ կոն-
քերը՝ թաղարները՝ և թիակները՝ ու
կոնքերը՝ և մսահանները՝ ու կրակի
ամանները շինեց․ անոր բոլոր գոր-
4 ծիքները պղնձէ շինեց ։ Եւ սեղա-
նին համար՝ անոր շրջանակին տա-
կէն գրեթէ մէջտեղը՝ պղնձէ ցան-
5 ցակերպ կասկարայ մը շինեց ։ Եւ
պղնձէ կասկարային չորս անկիւն-
ները չորս օղակներ ձուլեց ձողե-
6 րուն տեղեր ըլլալու համար ։ Եւ
ձողերը Սատիմի փայտէ շինեց, ու
7 զանոնք պղնձով պատեց ։ Եւ ձո-
ղերը սեղանին քովերը եղած օղակ-
ներուն անցուց, որ անիկայ անոնց-
մով վերցուի․ զանիկայ տախտակ-
ներով շինեց՝ ու մէջը դատարկ ։

Ա Գլ․ ԻԷ․ 1։

8 Եւ [Բ] պղնձէ աւազանը ու անոր
պղնձէ խարիսխը՝ ժողովքի խո-
րանին դուռը [Գ] խումբերով ժող-
վուող կնիկներուն հայելիներէն
շինեց ։

Բ Գլ․ Լ․ 18։
Գ Աթագ․ Բ․ 22։

9 Եւ [Դ] սրահը շինեց․ հարաւային
կողմին համար՝ սրահին վարագուր-
ները մանուած բարակ քթանէ ըլ-
10 լալով՝ հարիւր կանգուն էին․ Ա-
նոնց սիւները քսան՝ ու անոնց
պղնձէ խարիսխները քսան էին․
սիւներուն ճանկերը ու անոնց կա-
11 պերը արծաթ էին ։ Եւ հիւսիսա-
յին կողմին համար՝ վարագուրները
հարիւր կանգուն, անոնց քսան
սիւները ու անոնց քսան խարիսխ-
ները պղնձէ էին, սիւներուն ճան-
կերը ու անոնց կապերը արծաթ
12 էին ։ Եւ արևմտեան կողմին հա-
մար՝ վարագուրները յիսուն կան-
գուն էին․ անոնց սիւները տասը՝
ու անոնց խարիսխները տասը էին․
սիւներուն ճանկերը ու անոնց կա-
13 պերը արծաթ էին ։ Եւ արևելեան
կողմին համար՝ վարագուրները յի-
14 սուն կանգուն էին ։ Դրանը մէկ

Դ Գլ․ ԻԷ․ 9։

Ն. Ք. ԳՔ. 1491

կողմին վարագուրները տասնու-
հինգ կանգուն՝ անոնց սիւները ի-
րեք՝ ու անոնց խարիսխները իրեք
15 էին . Եւ միւալ կողմին համար ալ՝
այսինքն սրահին դրանը մէկ կողմէն
ու միւալ կողմէն վարագուրները
տասնուհինգ կանգուն , անոնց
սիւները իրեք՝ ու անոնց խարիսխ-
16 ները իրեք էին ։ Սրահին բոլոր
վարագուրները շուրջանակի մա-
17 նուած բարակ քթանէ էին ։ Եւ
սիւներուն խարիսխները պղնձէ՝
սիւներուն ճանկերը ու անոնց կա-
պերը արծաթէ՝ և անոնց խոյակնե-
րը արծաթապատ՝ ու սրահին բո-
լոր սիւներն ալ արծաթ կապերով
18 էին ։ Եւ սրահին դրանը վարա-
գուրը նկարագործ էր , կապու-
տակէ՝ ու ծիրանեգոյնէ՝ և կրկնա-
կի կարմիրէ՝ ու մանուած բարակ
քթանէ . երկայնութիւնը քսան
կանգուն՝ և լայնութեանը մէջի
բարձրութիւնը սրահին վարագուր-
ներուն համեմատ՝ հինգ կանգուն
19 էր ։ Եւ անոնց սիւները չորս՝ ու
անոնց պղնձէ խարիսխները չորս
էին , անոնց ճանկերը արծաթէ՝ և
անոնց խոյակները արծաթապատ՝
20 ու կապերը արծաթէ էին ։ Եւ
խորանին ու շուրջանակի սրահին
ե Գլ. իէ. 19։
բոլոր ե ցիցերը պղնձէ էին ։
21 Ասիկայ է խորանին՝ այսինքն
Վկայութեան խորանին հաշիւը ,
զ Թուոց. ա. 50, 53 ։ Գ. 15 ։ Դ. 11 ։ ԴԵ. 7, 8 ։ Ծր. 2 ։ բ Մն. իդ. 6 ։ Գոր. է. 44։
որ Մովսէսին պատուիրածին պէս՝
Ղեւտացւոց պաշտօնին համար Ա-
հարոն քահանային որդւոյն Ի-
թամարին ձեռքովը հաշուեցաւ ։
22 Եւ Յուդայի ցեղէն Ովրի որդւոյն
ե Թուոց. դ. 28, 33 ։
Ուրիին որդին Բեսելիէլը ըրաւ ան
է Գլ. լա. 2, 6 ։
ամէնը՝ որ Տէրը Մովսէսին պա-
23 տուիրեց ։ Եւ վարպետ քանդա-
կագործը՝ և կապուտակով ու ծի-
րանեգոյնով և կրկնակի կարմիրով
ու բարակ քթանով նկարագոր-
ծողը՝ Դանի ցեղէն Աքիսամայի
որդին Ողիաբը անոր հետն էր ։
24 Աս շինուածքին համար գործա-
ծուած բոլոր ոսկին՝ այսինքն՝ սրբա-
րանին բոլոր շինուածքին նուի-
ը Գլ. լ. 13 ։ 24 ։ Ղև. ե. 15 ։ իէ. 3, 25 ։ Թուոց. գ. 47 ։ Ժր. 16 ։
րուած ոսկին՝ ը սրբարանին սիկղին
համեմատ՝ քսանուինը տաղանդ ու
25 եօթը հարիւր երսուն սիկղ էր ։ Եւ
ժողովքէն համրուողներուն արծա-
թը՝ սրբարանին սիկղին համեմատ՝
հարիւր տաղանդ ու հազար եօթը
հարիւր եօթանասունուհինգ սիկղ
26 էր ։ Քսան տարեկանէն վեր համ-
ժ Գլ. լ. 13, 15 ։
րուելու անցնողներէն ամէն մէկը
ժ պէգա մը՝ այսինքն սրբարանին սիկ-
ի Թուոց. ա. 46 ։
ղին համեմատ՝ կէս սիկղ տալով ,
ի վեց հարիւր իրեք հազար հինգ հա-
լ Գլ. իզ. 19, 21, 25, 32 ։
27 րիւր յիսուն մարդէն ըլլալով ։ Եւ
սրբարանին լ խարիսխները՝ ու վա-
րագուրին խարիսխները ձուլելու
համար՝ հարիւր տաղանդ արծաթ
գնաց . մէկ խարիսխը մէկ տաղանդ
ըլլալով՝ հարիւր տաղանդէն հարիւր
28 խարիսխ եղաւ ։ Եւ հազար եօթը
հարիւր եօթանասունուհինգ սիկղ
արծաթով սիւներուն ճանկերը շի-
նեց , ու անոնց խոյակները պատեց ,
29 և զանոնք կապեց ։ Եւ նուիրուած
պղինձը եօթանասուն տաղանդ ու
երկու հազար չորս հարիւր սիկղ
30 էր ։ Եւ անով ժողովքի խորանին
դրանը խարիսխները՝ ու պղնձէ սե-
ղանը՝ և անոր պղնձէ կասկարան՝
31 ու սեղանին բոլոր գործիքները , Եւ
շուրջանակի սրահին խարիսխները՝
ու սրահին դրանը խարիսխները՝ և
խորանին բոլոր ցիցերը՝ ու շուրջա-
նակի սրահին բոլոր ցիցերը շինեց ։

## ԳԼ. ԼԹ

1 Պաշտօնի հանդերձները ու սուրբ զգեստնե-
րը ։ 2 Եփուտը ։ 8 Լանջապանակը ։ 22
Եփուտին պատմուճանը ։ 27 Բարակ քթանէ
շապիկները , խոյրը , ապարօշները , ևն ։ 30
Սուրբ պսակին թիթեղը ։ 32 Մովսէս շի-
նուած բաները տեսնելով կը հաւնի , ու գոր-
ծողները կ'օրհնէ ։

1 Եւ ա կապուտակէ՝ ու ծիրանե- ա Գլ. լե. 23։
գոյնէ՝ և կրկնակի կարմիրէ շի-
նեցին բ պաշտօնի լաթերը՝ սրբա- բ Գլ. լա. 10 ։ լե. 19։
րանին մէջ պաշտօն կատարելու
համար . և Ահարոնին համար սուրբ
զգեստներ շինեցին , գ Տէրոջը Մով- գ Գլ. իը. 4։
սէսին պատուիրածին պէս ։
2 դ Ու եփուտը շինեց ոսկիէ՝ կա- դ Գլ. իը. 6։
պուտակէ՝ ու ծիրանեգոյնէ՝ և
կրկնակի կարմիրէ՝ ու մանուած
3 բարակ քթանէ ։ Եւ ոսկին բա-
րակ թիթեղուներու ծեծեցին ,
և թելեր կտրեցին , որ կապուտա-
կին՝ ծիրանեգոյնին՝ և կրկնակի
կարմիրին՝ ու բարակ քթանին հետ
4 վարպետութեամբ գործեն ։ Կռն-
կուող վակասներ շինեցին անոր՝
այսինքն եփուտին , որ երկու ծայրէն
5 կը կռնկուէր ։ Եւ եփուտին վրայ
եղած ժապաւէնը նոյն նիւթէն էր՝
անոր գործքին համեմատ , ոսկիէ՝
կապուտակէ՝ ու ծիրանեգոյնէ՝ և
կրկնակի կարմիրէ՝ ու մանուած
բարակ քթանէ էր , Տէրոջը Մով-
սէսին պատուիրածին պէս ։
6 ե Եւ ոսկի խորշերու մէջ եղնգնա- ե Գլ. իը. 9։
քարերը գամեցին , ու անոնց վրայ
Իսրայէլի որդւոցը անունները կնիք
փորագրելու պէս փորագրեցին ։
7 Եւ զանոնք եփուտին ուսերուն
վրայ դրաւ , որ զ յիշատակի քարեր զ Գլ. իը. 12։
ըլլան Իսրայէլի որդւոցը , Տէրոջը
Մովսէսին պատուիրածին պէս ։
8 է Եւ լանջապանակը ճարտարու- է Գլ. իը. 15։
թեամբ եփուտին գործին պէս ոս-
կիէ՝ կապուտակէ՝ ու ծիրանեգոյնէ՝

Ն․ Ք․ Գ․ Ք․ 1491

և կրկնակի կարմիրէ՝ ու մանուած
9 բարակ քթանէ շինեց․ Քառա-
կուսի ու երկուքի ծալլուող շինե-
ցին լանջապանակը․ մէկ թիզ եր-
կայնութեամբ ու մէկ թիզ լայ-
նութեամբ՝ երկուքի ծալլուող էր․
է Գլ․ ԻԸ․ 17, 10 էԵւ անոր վրան չորս կարգ քարեր
ագուցին․ առաջին կարգը՝ սարդիոն,
տպազիոն ու զմրուխտ՝ առաջին
11 կարգն էր․ Եւ երկրորդ կարգը՝
կարկեհան՝ շափիւղայ ու ադա-
12 մանդ էր․ Եւ երրորդ կարգն էր՝
13 գոճազմ, ակատ ու մեղեսիկ․ Եւ
չորրորդ կարգն էր՝ ոսկեքար, ե-
ղնգնաքար ու յասպիս․ ասոնք
ոսկի խորշերու մէջ ագուցուած էին։
14 Եւ քարերը՝ Իսրայէլի որդւոցը ա-
նուններուն համեմատ՝ անոնց ա-
նուններուն պէս տասներկու-ք
էին․ ամէն մէկուն անունը տա-
սներկու ցեղերուն համեմատ՝ կնիք
փորագրողի գործով փորագրուած
15 էր։ Եւ լանջապանակին վրայ զուտ
ոսկիէ հիւսուած եզերքի շղթաներ
16 շինեցին։ Եւ երկու ոսկի ճարմանդ
ու երկու ոսկի օղակ շինեցին․ և եր-
կու օղակները լանջապանակին եր-
17 կու ծայրերը դրին։ Եւ լանջապա-
նակին ծայրերը եղած երկու օղակ-
ներուն անցուցին երկու ոսկիէ հիւ-
18 սուած շղթաները։ Եւ երկու շղ-
թաներուն միւս երկու ծայրերը՝
երկու ճարմանդներուն անցուցին,
ու ասոնք եփուտին ուսերուն վրայ՝
19 անոր առջևի կողմը դրին։ Եւ
նոյնպէս երկու ոսկի օղակներ ալ շի-
նեցին, և զանոնք լանջապանակին
ներսի կողմէն՝ եփուտին կցուած
20 եզերքին երկու ծայրերը դրին։ Եւ
նոյնպէս երկու ոսկի օղակներ շինե-
ցին, ու զանոնք եփուտին երկու
ուսերուն վարէն անոր առջևի
կողմի կցուածքին մօտ՝ եփուտին
21 ժապաւէնին վրայէն անցուցին։ Եւ
լանջապանակը իր օղակներէն՝ կա-
պուտակէ շինուած լարով եփուտին
օղակներուն կապեցին, որ եփու-
տին ժապաւէնին վրայ ըլլայ, ու
լանջապանակը եփուտին վրայէն
չզատուի, Տէրոջը Մովսէսին պա-
տուիրածին պէս։
Ը Գլ․ ԻԸ․ 31, 22 ԸԵւ եփուտին պատմուճանը ոս-
տայնանկի գործով բոլորովին կա-
23 պուտակէ շինեց։ Եւ պատմուճա-
նին մէջտեղը զրահի ճեղքուածքին
պէս ճեղքուածք մը կար․ այս ճեղ-
քուածքին բոլորտիքը հիւսուած ե-
24 զերք ունէր՝ որ չպատռի։ Եւ
պատմուճանին քղանցքներուն վը-
րայ՝ կապուտակէ՝ ու ծիրանեգոյ-
նէ՝ և կրկնակի կարմիրէ՝ ու մա-
նուած բեհեզէ հիւսուած նռներ շինե-
Թ Գլ․ ԻԸ․ 33, 25 ցին։ Եւ զուտ ոսկիէ Թզանգակ-
ներ շինեցին, ու զանգակները նռ-
ներուն մէջտեղը՝ պատմուճանին
քղանցքներուն վրայ շուրջանակի
26 նռներուն մէջը դրին։ Պատմուճա-
նին քղանցքներուն վրայ շուրջա-
նակի զանգակ մը ու նուռ մը՝ զան-
գակ մը ու նուռ մը կար, պաշտօնին
համար, Տէրոջը Մովսէսին պա-
տուիրածին պէս։
27 ԺԵւ Ահարոնին ու անոր որդւոցը
համար՝ բարակ քթանէ ոստայ-
նանկի գործ շապիկներ շինեցին։ Ժ Գլ․ ԻԸ․ 39, 40․
28 ԻԵւ խոյրը բարակ քթանէ՝ ու
հանդէսի ապարօշները բարակ քը-
թանէ՝ ու Լ կտաւեղէն անդրավար-
տիքները մանուած բարակ քթանէ, Ի Գլ․ ԻԸ․ 4, 39․ Եզեկ․ ԽԴ․ 18․ Լ Գլ․ ԻԸ․ 42․
29 ԽԵւ գօտին մանուած բարակ քը-
թանէ՝ կապուտակէ՝ ծիրանեգոյնէ
և կրկնակի կարմիրէ՝ նկարագործ
շինեցին, Տէրոջը Մովսէսին պա-
տուիրածին պէս։ Խ Գլ․ ԻԸ․ 39,
30 ԿԵւ սուրբ պսակին թիթեղը զուտ
ոսկիէ շինեցին, ու անոր վրան
կնիք փորագրելու պէս՝ ՍՐԲՈՒ-
31 ԹԻՒՆ ՏԵԱՌՆ գրեցին․ Եւ անոր
կապուտակ ժապաւէն մը անցու-
ցին, որ վերէն խոյրին վրայ դրուի,
Տէրոջը Մովսէսին պատուիրածին
պէս։ Կ Գլ․ ԻԸ․ 36, 37․
32 Ուստի խորանին՝ այսինքն ժողով-
քի վրանին բոլոր գործը լմնցաւ․
և Իսրայէլի որդիքը ՂՏէրոջը Մով-
սէսին բոլոր պատուիրածին պէս
33 ըրին․ անանկ ըրին։ Եւ խորանը
Մովսէսին բերին, վրանը ու անոր
բոլոր գործիքները՝ անոր ճարմանդ-
ները՝ անոր տախտակները՝ անոր
նիգերը՝ և անոր սիւները ու խա-
34 րիսխները, Եւ կարմիր ներկուած
խոյի մորթերէն ծածկոցը՝ ու թէ-
հաշի մորթերէն եղած ծածկոցը՝ և
35 ծածկոցին վարագոյրը, Վկայու-
թեան տապանակը ու անոր ձողերը՝
36 և քաւութիւնը, Սեղանը ու անոր
բոլոր անօթները՝ և առաջաւորու-
37 թեան հացը, Զուտ ոսկիէ աշտա-
նակը իր ճրագներովը՝ այսինքն կար-
գաւ դրուած ճրագներովը՝ ու իր
բոլոր գործիքներովը՝ և լոյսին եղը,
38 Եւ ոսկի սեղանը՝ ու օծման եղը՝ և
անուշահոտ խունկը՝ ու խորանին
39 դրանը վարագոյրը, Պղնձէ սեղա-
նը՝ ու անոր պղնձէ կասկարան՝ ա-
նոր ձողերը և անոր բոլոր գործիք-
ները՝ աւազանը ու անոր խարիսխը,
40 Սրահին վարագոյրները՝ անոր սիւ-
ները ու խարիսխները՝ և սրահին
դրանը վարագոյրը՝ անոր չուան-
ները ու ցիցերը՝ և խորանին՝ այսինքն
ժողովքի վրանին պաշտօնին համար
41 եղած բոլոր կարասիքը, Սրբարա-
նին մէջ պաշտելու համար՝ պաշտօ-
նին լաթերը, ու Ահարոն քահա- Ղ Ղևտ 42, 43, Գլ․ ԽԵ․ 40,

Ն. ք. գ. ք. 1491

նային սուրբ զգեստները, ու ա-
նոր որդւոցը զգեստները ; որ քա-
42 հանայութիւն ընեն ։ Ան ամենուն
պէս՝ որ Տէրը Մովսէսին պատուի-
րեց, անանկ ʸըրին Իսրայէլի որ-
դիքը ամէն գործը ։
43 Եւ Մովսէս բոլոր շինուածքին
նայեցաւ, և ահա Տէրոջը պատուի-
րածին պէս ըրին ան. անանկ ըրին.
և Մովսէս օրհնեց զանոնք ։

ʸ Գր. լե. 10 ; ղ Ղև. թ. 22, 23 ; Թու. զ. 23 ; Ցես. իբ. 6 ; բ Թագ. զ. 18 ; գ Թագ. ը. 14 ; բ Մն. լ. 27 ;

## ԳԼ. Խ

1 Աստուած կը պատուիրէ Մովսէսին՝ որ խորանը կանգնէ, 9 և օծէ, 13 ու Ահարոնը և անոր որդիքը քահանայ օրհնէ ։ 16 Մովսէս աս պատուիրանքները կը կատարէ ։ 34 Խորանը ծածկող ամպը ։

1 Եւ Տէրը խօսեցաւ Մովսէսին՝ ըսե-
2 լով. ᵃԱռաջին ամսուն առա-
ջին օրը պիտի կանգնես ᵇխորանը՝
3 ժողովքի վրանը ։ Եւ ᶜանոր
մէջը պիտի դնես վկայութեան տա-
պանակը, ու վարագուրովը ծածկես
4 տապանակը ։ Եւ ᵈսեղանը ներս
պիտի բերես. ու ᵉանոր վրայ շա-
րուելու հացերը շարես. ᶻև աշտա-
նակը պիտի բերես, ու անոր ճրագ-
5 ները վառես ։ ᵉԵւ վկայութեան
տապանակին առջևը պիտի դնես
խունկին ոսկի սեղանը. ու խորա-
6 նին դրանը վարագոյրը դնես ։ Եւ
խորանին՝ ժողովքի վրանին
դրանը առջևը՝ ողջակէզի սեղանը
7 պիտի դնես ։ Եւ ᵉժողովքի վրանին
ու սեղանին մէջտեղը պիտի դնես
աւազանը, ու անոր մէջը ջուր դնես ։
8 Եւ շուրջանակի սրահը պիտի կանգ-
նես, ու սրահին դրանը վարագոյրը
9 դնես ։ Եւ օծման եղը պիտի առ-
նես, ու խորանը և անոր մէջը եղած
ամէն բաները ᶿօծես. և անիկայ ու
անոր ամէն անօթները պիտի սըր-
10 բես, որ սուրբ ըլլայ ։ Եւ ողջա-
կէզի սեղանը՝ ու անոր բոլոր գոր-
ծիքները պիտի օծես, ու սեղանը
սրբես. և ᶨսեղանը *ամենասուրբ
11 պիտի ըլլայ ։ Եւ աւազանը ու անոր
խարիսխը պիտի օծես, ու սրբես
12 անիկայ ։ ᶦԵւ Ահարոնը ու անոր
որդիքը ժողովքի խորանին դրանը
պիտի մօտեցընես, ու զանոնք ջրով
13 լուաս ։ Եւ Ահարոնին պիտի հագ-
ցընես սուրբ զգեստները, ᶫու օծես
անիկայ, և սրբես անիկայ, որ ինծի
14 քահանայութիւն ընէ ։ Եւ անոր
որդիքն ալ պիտի մօտեցընես, ու
15 անոնց շապիկներ հագցընես ։ Եւ
անոնց հայրը օծածիդ պէս՝ պիտի
օծես զանոնք, որ ինծի քահանա-
յութիւն ընեն. և անոնց օծումը
իրենց ազգերուն մէջ ᵡյաւիտենա-
կան քահանայութեան համար պի-
տի ըլլայ ։

ա Գր. ժբ. 2 ; ժգ. 4 ; բ Հմր 17 ; Գր. իզ. 1, 30 ; գ Հմր 21 ; Գր. իզ. 33 ; Թու. դ. 5 ; դ Հմր 22 ; Գր. իզ. 35 ; ե Հմր 23 ; Գր. իե. 30 ; Ղև. իդ. 5, 6 ; զ Հմր 24, 25 ; է Հմր 26 ; ը Հմր 30 ; Գր. լ. 18 ; թ Գր. լ. 26 ; ժ Գր. իթ. 36, 37 ; * Եբր. սրբութիւն սրբութեանց ; ի Ղև. ը. 1—13 ; լ Գր. իը. 41 ; խ Թու. իե. 13 ;

16 Եւ Մովսէս՝ Տէրոջը իրեն բոլոր
պատուիրածին պէս ըրաւ. անանկ
17 ըրաւ ։ Եւ եղաւ որ երկրորդ տա-
րին՝ առաջին ամսուն առաջին օրը
18 ᶜխորանը կանգնուեցաւ ։ Եւ Մով-
սէս կանգնեց խորանը, ու անոր
խարիսխները դրաւ, և անոր տախ-
տակները կանգնեց, ու անոր նի-
գերը անցուց, ու սիւները կանգ-
19 նեց ։ Եւ խորանին վրայ տարա-
ծեց վրանը, ու վերէն վրանին
ծածկոցը անոր վրայ դրաւ՝ ինչպէս
որ Տէրը Մովսէսին պատուիրեր
20 էր ։ Եւ ᵏվկայութիւնը առաւ՝ ու
տապանակին մէջը դրաւ. և ձողերը
տապանակին վրայ անցուց, ու վե-
րէն տապանակին վրայ քաւութիւ-
21 նը դրաւ ։ Եւ տապանակը խո-
րանին մէջը բերաւ, ու ʰծածկող
վարագոյրը դրաւ, և վկայութեան
տապանակը ծածկեց, ինչպէս որ
Տէրը Մովսէսին պատուիրեր էր ։
22 ᵈԵւ ժողովքի վրանին մէջ՝ խորա-
նին հիւսիսային կողմը՝ վարագու-
րին դուրսի դին դրաւ սեղանը.
23 ᶻԵւ անոր վրայ շարուելու հացերը
շարեց Տէրոջը առջևը, ինչպէս որ
Տէրը Մովսէսին պատուիրեր էր ։
24 ᵐԵւ ժողովքի վրանին մէջ՝ սեղանին
դիմացը խորանին հարաւային կող-
25 մը դրաւ աշտանակը ։ Եւ Տէրոջը
առջևը ʲճրագները վառեց, ինչպէս
որ Տէրը Մովսէսին պատուիրեր էր ։
26 ʲԵւ ժողովքի վրանին մէջ՝ վարա-
գուրին առջևը դրաւ ոսկի սեղանը.
27 ⁿԵւ անոր վրայ անուշահոտ խունկ
ծխեց, ինչպէս որ Տէրը Մովսէսին
28 պատուիրեր էր ։ ᶻԵւ խորանին
29 դրանը վարագոյրը դրաւ ։ ᵒԵւ
խորանին՝ ժողովքի վրանին
դրանը քով ողջակէզին սեղանը դը-
րաւ. ու ᶻանոր վրայ ողջակէզը ու
հացի ընծան մատուց, ինչպէս որ
Տէրը Մովսէսին պատուիրեր էր ։
30 ᵠԵւ ժողովքի վրանին ու սեղանին
մէջտեղը դրաւ աւազանը, և անոր
մէջը՝ լուացուելու համար ջուր դը-
31 րաւ ։ Եւ Մովսէս ու Ահարոն և
անոր որդիքը իրենց ձեռքերը ու
32 ոտքերը անկէ կը լուային. Ժո-
ղովքի վրանը մտած ատեննին, և
սեղանին մօտենալու ատեննին կը
լուացուէին, ᶻինչպէս որ Տէրը
33 Մովսէսին պատուիրեր էր ։ ˢԵւ
խորանին ու սեղանին բոլորտիքը
սրահը կանգնեց, և սրահին դրանը
վարագոյրը դրաւ ։ Այսպէս Մով-
սէս բոլոր գործը լմնցուց ։
34 ᵛԵւ ամպ մը ծածկեց ժողովքի
վրանը, և Տէրոջը փառքը լեցուց
35 խորանը ։ Եւ Մովսէս չէր կրնար
մտնել ժողովքի վրանը. ինչու որ
ամպը անոր վրայ կը կենար, ու Տէ-

Ն. ք. գ. ք. 1491 / 1490

ծ Հմր 1 ; Թու. է. 1 ; կ Գր. իե. 16 ; հ Գր. իզ. 33 ; 12 ; ղ Գր. իզ. 35 ; ճ Հմր 4 ; մ Գր. իզ. 35 ; յ Հմր 4 ; Գր. իե. 37 ; ն Հմր 5 ; Գր. լ. 6 ; շ Գր. լ. 7 ; ո Հմր 5 ; Գր. իզ. 36 ; չ Հմր 6 ; պ Գր. իթ. 38, 42 ; ջ Հմր 7 ; Գր. լ. 18 ; ռ Գր. լ. 19, 20 ; ս Հմր 8 ; Գր. իէ. 9, 16 ; վ Գր. իթ. 43 ; Ղև. ժզ. 2 ; Թու. թ. 15 ; գ Թագ. ը. 10, 11 ; բ Մն. ե. 13 ; է. 2 ; Ես. զ. 4 ; Անգ. բ. 7, 9 ; Յայտ. ժե. 8 ; տ Ղև. ժզ. 2 ; գ Թագ. ը. 11 ; բ Մն. ե. 14 ;

Ն. Ք. ԳՔ. 1490

Թու. Թ. 17. Ժ. 11. Նեեմ. Թ. 19. Թու. Թ. 19—22.

բոլը փառքը լեցուցեր էր խորանը ։
36 Եւ Իսրայէլի որդիքը իրենց բոլոր
ճամբորդութեանցը մէջ՝ երբոր ամ-
պը խորանին վրայէն վերնար, ան
37 ցնէին կը չուէին ․ Եւ թէ որ ամ-
պը չվերնար, մինչև անոր վերնալու
38 օրը չէին չուեր ։ Քանզի ցորեկը
Տէրոջը ամպը խորանին վրայ էր,
և գիշերը անոր վրայ կրակ կար,
Իսրայէլի բոլոր ժողովուրդին առ-
ջևը՝ իրենց ամէն ճամբորդութեան-
ցը մէջ ։

Ն. Ք. ԳՔ. 1490

Գղ. ԺԳ. 21. Թու. Թ. 15.

---

# ԳԻՐՔ ՂԵՒՏԱՑՒՈՑ

---

Ն. Ք. ԳՔ. 1490

Ել. ԺԹ. 3. Ել. Խ. 34, 35. Թու. ԺԲ. 4, 5. Գղ. ԻԲ. 18, 19. Ել. ԺԲ. 5. Գղ. Գ. 1. ԻԲ. 20, 21. Օր. ԺԵ. 21. Մաղ. Ա. 14. Եփե. Ե. 27. Եբր. Թ. 14. Ա Պետ. Ա. 19. Գղ. Գ. 2, 8, 13. Դ. 15. Ը. 14, 22. ԺԶ. 21. Ել. ԻԹ. 10, 15, 19. Գղ. Դ. 20, 26, 31, 35. Թ. 7. ԺԶ. 24. Թու. ԺԵ. 25. Բ Մն. ԻԹ. 23, 24. Հռով. Ե. 11. Գղ. ԻԲ. 21, 27. Ես. ԾԶ. 7. Հռով. ԺԲ. 1. Փիլ. Դ. 18. Մէք. Գ. 6. Բ Մն. ԼԵ. 11. Եբր. Ժ. 11. Գղ. Գ. 8. Եբր. ԺԲ. 24. Ա Պետ. Ա. 2. Ծն. ԻԲ. 9. Ծն. Ը. 21. Եզեկ. Ի. 28, 41. Բ Կոր. Բ. 15. Եփե. Ե. 2. Փիլ. Դ. 18. Հմր 3. Հմր 5.

## ԳԼՈՒԽ Ա

1 Արջառներէն, 10 հօտերէն, 14 կամ թռչուններէն ողջակէզ մատուցանելու կանոնները ։

1 Եւ Տէրը կանչեց Մովսէսը, ու
ժողովքի խորանէն խօսեցաւ
2 անոր՝ ըսելով ․ Խօսէ Իսրայէլի որ-
դւոցը, ու ըսէ անոնց ․ Եթէ որ
ձեզմէ մէկը անասուններէն ընծայ
մատուցանելու ըլլայ Տէրոջը, ձեր
ընծան արջառներէն կամ հօտերէն
պիտի մատուցանէք ։
3 Թէ որ անոր ընծան արջառներէն
ողջակէզ է, արու անարատ պիտի
մատուցանէ ․ ու ժողովքի խորա-
նին դրանը քով պիտի մատուցանէ
զան՝ Տէրոջը առջևը ընդունելի ըլ-
4 լալու համար ։ Եւ իր ձեռքը ող-
ջակէզին գլխուն վրայ պիտի դնէ,
ու ան իրեն քաւութիւն ըլլալու
համար ընդունելի պիտի ըլլայ ։
5 Եւ զուարակը պիտի մորթէ Տէ-
րոջը առջևը ․ ու Ահարոնին որդի-
քը քահանաները՝ արիւնը պիտի
մօտեցընեն, և ժողովքի խորանին
դրանը քով եղած սեղանին վրայ
շուրջանակի պիտի սրսկեն արիւ-
6 նը ։ Եւ ողջակէզին մորթը պիտի
հանէ, ու կտոր կտոր պիտի ընէ
7 զողջակէզը ։ Եւ Ահարոն քահանա-
յին որդիքը սեղանին վրայ կրակ
պիտի դնեն, ու կրակին վրայ
8 փայտեր շարեն ․ Եւ Ահարոնին որ-
դիքը քահանաները՝ սեղանը եղած
կրակին վրայի փայտերուն վրայ
պիտի շարեն կտորները՝ գլուխը ու
9 ճարպը ․ Բայց անոր փորոտիքը ու
ոտքերը ջրով պիտի լուայ, և քա-
հանան պիտի այրէ ամէնը սեղանին
վրայ՝ Տէրոջը ողջակէզ ու անուշա-
հոտ պատարագ ըլլալու համար ։
10 Եւ թէ որ անոր ողջակէզի ընծան
հօտերէն՝ այսինքն ոչխարներէն կամ
այծերէն է, արու անարատ պիտի
11 մատուցանէ ։ Եւ պիտի մորթէ
անիկայ Տէրոջը առջևը սեղանին
հիւսիսային կողմը ․ ու Ահարոնին
որդիքը քահանաները՝ սեղանին
վրայ շուրջանակի պիտի սրսկեն
12 անոր արիւնը ։ Եւ կտոր կտոր պի-
տի ընէ զան՝ գլխովը ու ճարպովը ․
և քահանան սեղանը եղած կրակին
վրայի փայտերուն վրայ պիտի շարէ
13 անոնք ։ Եւ փորոտիքը ու ոտքերը
ջրով պիտի լուայ ․ ու քահանան
ամէնը պիտի բերէ՝ ու սեղանին վը-
րայ այրէ ․ ասիկայ ողջակէզ ու ա-
նուշահոտ պատարագ մըն է Տէ-
րոջը ։
14 Եւ թէ որ ողջակէզի համար Տէ-
րոջը մատուցանելու ընծան թըռ-
չուններէն է, ան ատենը անիկայ
իր ընծան տատրակներէն կամ
աղաւնիի ձագերէն պիտի մատու-
15 ցանէ ։ Եւ քահանան սեղանը
պիտի բերէ զան՝ ու անոր գլուխը
փրցընէ, և սեղանին վրայ պիտի
այրէ, ու անոր արիւնը սեղանին
16 պատին քովը քամուի ։ Եւ անոր կըտ-
նառքը ու աղբը պիտի զատէ, և
սեղանին արևելեան կողմը եղած
17 մոխրանոցը նետէ ։ Եւ զանիկայ
թևերէն պիտի պատռէ՝ առանց
զատելու ․ ու քահանան պիտի այ-
րէ զանիկայ սեղանին վրայ՝ կրա-
կին վրայի փայտերուն վրայ ․ Ասի
ողջակէզ ու անուշահոտ պատա-
րագ մըն է Տէրոջը ։

## ԳԼ. Բ

1 Հացի ընծան բարակ ալիւրէ՝ եղով ու խունկով պիտի մատուցուէր ։ 4 Թոնիրի մէջ, 5 տապակի մէջ, 7 սանի մէջ եփուած շօթեր նուիրելու կերպը ։ 13 Բնաւ հացի ընծայ մը առանց աղի պիտի չըլլար ։ 14 Երախայրի պտուղներուն մատուցումը ։

1 Եւ երբոր մէկը հացի ընծայ մա-
տուցանելու ըլլայ Տէրոջը, ա-
նոր ընծան բարակ ալիւրէ պիտի
ըլլայ ․ ու անոր վրան եղ պիտի
2 թափէ, և կնդրուկ դնէ վրան ․ Եւ
Ահարոնին որդւոցը քահանանե-
րուն պիտի բերէ զան ․ ու քահա-
նան անկէ իր ձեռքը լեցուն անոր
բարակ ալիւրէն ու եղէն պիտի
առնէ բոլոր կնդրուկին հետ մէկ-

Ն. Ք. ԳՔ. 1490

Գղ. Ե. 7. ԺԲ. 8. Ղուկ. Բ. 24. Գղ. Զ. 10. Ծն. ԺԵ. 10. Հմր 9. 13. Գղ. Զ. 14. Թ. 17. Թու. ԺԵ. 4.

Ն․Ք․ՂՓ․ 1490

բ Հմր 9 ։ Գւ․ ե․12 ։ զ․ 15 ։ իդ․7 ։ Եւ․ կզ․3 ։ Գոր․ ժ․4 ։
գ Գւ․ է․9 ։ ժ․12, 13 ։
դ Եւ․ իԹ․ 37 ։ Թուոց․ ժը․9 ։
ե Եւ․ իԹ․2 ։

տեղ , և քահանան [բ]յիշատակի
համար սեղանին վրայ այրէ՝ Տէրոջը անուշահոտ պատարագ ըլլալու
3 համար ․ Եւ [գ]հացի ընծայէն մնացածը՝ Ահարոնին ու անոր որդւոցը
պիտի ըլլայ ․ [դ]ասիկայ ամենասուրբ
պատարագ մըն է Տէրոջը ։
4 Եւ թէ որ թոնիրի մէջ եփած
հացի ընծայ մատուցանելու ըլլաս ,
բարակ ալիւրէ եղով շաղուած անխմոր շօթեր՝ կամ [ե]եղով օծուած
անխմոր լաւաշներ պիտի ըլլայ ։
5 Եւ թէ որ քու ընծադ տապակի
վրայ եփուած ընծայ է , բարակ ալիւրէ եղով շաղուած անխմոր պի-
6 տի ըլլայ ։ Կտոր կտոր պիտի կտրտես զան , ու վրան եղ թափես ․ ասիկայ հացի ընծայ է ։
7 Եւ թէ որ քու ընծադ սանի մէջ
եփուած ընծայ է , բարակ ալիւրէ
8 եղով պիտի շինուի ։ Եւ ասոնցմէ
շինուած ընծան Տէրոջը պիտի բերես , ու քահանային ներկայացընես , և ինքը սեղանին մօտեցընէ

զ Հմր 2 ։
է Եւ․ իԹ․ 18 ։
ը Հմր 3 ։

9 զան ․ Եւ քահանան հացի ընծայէն
[զ]անոր յիշատակը պիտի առնէ , ու
սեղանին վրայ այրէ՝ Տէրոջը [է]ա-
10 նուշահոտ պատարագ ըլլալու ։ Եւ
[ը]հացի ընծայէն մնացածը Ահարոնին ու անոր որդւոցը պիտի ըլլայ ․
ասիկայ ամենասուրբ պատարագ մըն
է Տէրոջը ։
11 Հացի ընծան՝ որ դուք Տէրոջը

Թ Գւ․ զ․17 ։ Տես Մատ․ ժզ․ 12 ։ Մար․ ը․15 ։ Ղուկ․ ժբ․1 ։ Ա Կոր․ ե․ 8 ։ Գաղ․ ե․9 ։
ժ Եւ․ իբ․29 ։ Գւ․ իգ․10, 11 ։
ժա Մար․ Թ․ 49 ։ Կող․ դ․6 ։
ժբ Թուոց ժը․ 19 ։
ժգ Եզեկ․ խգ․ 24 ։
ժդ Գւ․ իգ․10, 14 ։
ժե Բ Թագ․ դ․ 42 ։
ժզ Հմր 1 ։
ժէ Հմր 2 ։

պիտի մատուցանէք՝ [Թ]խմորեալ պիտի չշինուի ․ ինչու որ
պատարագի համար ամենևին խմոր
կամ մեղր պիտի չայրէք Տէրոջը ։
12 [ժ]Ասոնք իբրև երախայրի պտուղի
ընծայ մատուցանէք Տէրոջը ․ բայց
սեղանին վրայ պիտի չայրուին ա-
13 նուշահոտութեան համար ։ Եւ
քու ամէն հացի ընծայիդ [ժա]աղ պիտի դնես , ու քու հացի ընծայէդ
[ժբ]քու Աստուծոյդ ուխտին աղը պակաս չընես ․ [ժգ]քու ամէն ընծայովդ
աղ ալ մատուցանես ։
14 Եւ թէ որ առջի պտուղներուն
ընծան մատուցանելու ըլլաս Տէրոջը , [ժդ]առջի պտուղներուն ընծային
համար՝ կրակով բոհրած թարմ
[ժե]հասկերէն ծեծուած ցորեն մա-
15 տուցանես ․ Եւ [ժզ]անոր վրան եղ
պիտի թափես , ու կնդրուկ դնես
16 վրան ․ ասիկայ հացի ընծայ է ։ Եւ
քահանան անոր ծեծուած ցորենէն
ու անոր եղէն՝ անոր բոլոր կնդրուկովը [ժէ]անոր յիշատակը պիտի այրէ՝
Տէրոջը պատարագ ըլլալու համար ։

ԳԼ․ Գ

1 Արջառներէն , 6 կամ հօտերէն , 7 Թէ՝ գառն , 13 և թէ այծ պիտի մատուցուէր խաղաղութեան զոհի համար ։

Ն․Ք․ՂՓ․ 1490

ա Գւ․ է․11, 29 ։ իբ․21 ։
բ Գւ․ ա․3 ։
գ Գւ․ ա․4, 5 ։ Եւ․ իԹ․ 10 ։

1 Եւ թէ որ անոր ընծան [ա]խաղաղութեան զոհ է , երբոր արջառներէն կը մատուցանէ , թէ արու
ըլլայ և թէ էգ , Տէրոջը առջևը
[բ]անարատ պիտի մատուցանէ զան ։
2 Եւ [գ]իր ձեռքը իր ընծայած անասունին գլխուն վրայ պիտի դնէ , ու
ժողովքի խորանին դուռը մորթէ
զան ․ և Ահարոնին որդիքը քահանաները սեղանին վրայ չուրջա-
3 նակի պիտի սրսկեն արիւնը ։ Եւ
խաղաղութեան զոհէն պատարագ
պիտի մատուցանէ Տէրոջը , այսինքն

դ Եւ․ իԹ․ 13, 22 ։ Գւ․ գ․ 8, 9 ։

[դ]փորոտիքը ծածկող ճարպը՝ ու
փորոտիքին վրայ եղած բոլոր ճար-
4 պը , Եւ երկու երիկամունքը՝ ու
կուշտին վրայ եղած անոնց վրայի
ճարպը՝ և լեարդին թաղանթը երիկամունքներով մէկտեղ պիտի
5 փրցընէ ․ Եւ Ահարոնին որդիքը՝
սեղանը եղած կրակին վրայի փայտերուն վրայ ողջակէզին հետ [ե]պիտի այրեն ասոնք , Տէրոջը անուշահոտ պատարագ ըլլալու համար ։

ե Գւ․ գ․12 ։ Եւ․ իԹ․ 13 ։

6 Եւ թէ որ խաղաղութեան զոհի
համար Տէրոջը մատուցանելու ընծան հօտերէն է , թէ արու ըլլայ և

զ Հմր 1, 2 ։

թէ էգ՝ [զ]անարատ պիտի մատու-
7 ցանէ զան ։ Թէ որ անիկայ իր ընծային համար գառն մատուցանէ ,
8 Տէրոջը առջևը պիտի բերէ զան , Եւ
ձեռքը իր ընծային գլխուն վրայ
պիտի դնէ , ու ժողովքի խորանին
առջևը մորթէ զան և Ահարոնին
որդիքը սեղանին վրայ չուրջանակի
9 պիտի սրսկեն անոր արիւնը ։ Եւ
խաղաղութեան զոհէն պատարագ
պիտի մատուցանէ Տէրոջը , այսինքն

* Եբր․ ողնայարէն

անոր ճարպը ու բոլոր դմակը *տակէն փրցընելով , և փորոտիքը ծածկող ճարպը՝ ու փորոտիքին վրայ
10 եղած բոլոր ճարպը , Եւ երկու երիկամունքը՝ ու կուշտին վրայ եղած
անոնց վրայի ճարպը՝ և լեարդին
թաղանթը երիկամունքներով մէկ-
11 տեղ պիտի փրցընէ ։ Եւ քահանան սեղանին վրայ պիտի այրէ ա-

է Տես Գւ․ իա․ 6, 8, 17, 21, 22 ։ իբ․ 25 ։ Եզեկ․ խդ․7 ։ Մաղ․ ա․ 7, 12 ։
† Եբր․ պատարագի հաց
ը Հմր 1, 7, 8 ։

սոնք՝ [է]Տէրոջը †պատարագ ըլլալու
համար ։
12 Եւ թէ որ անոր ընծան այծ է ,
[ը]Տէրոջը առջևը պիտի բերէ զան ,
13 Եւ իր ձեռքը անոր գլխուն վրայ
պիտի դնէ , ու ժողովքի խորանին
առջևը մորթէ զան ․ և Ահարոնին
որդիքը սեղանին վրայ չուրջանակի
14 պիտի սրսկեն անոր արիւնը ։ Եւ
անիկայ իր ընծայէն պատարագ
պիտի մատուցանէ Տէրոջը , այսինքն՝ փորոտիքը ծածկող ճարպը՝ ու
փորոտիքին վրայ եղած բոլոր ճար-
15 պը , Եւ երկու երիկամունքը՝ ու
կուշտին վրայ եղած անոնց վրայի
ճարպը՝ և լեարդին թաղանթը երի-

Ն · Ք · ՉՔ ·
1490

ա Գլ. է. 23, 25. ա Թագ. բ. 15. բ Մն. է. 7.
բ Գլ. գ. 18. է. 36. ժէ. 7. իդ. 14.
գ Հմր 16. Գլ. է. 23. բ Օր. լբ. 14. Նեեմ. ը. 10.
դ Ծն. թ. 4. Գլ. է. 26. ժէ. 10, 14. բ Օր. ժբ. 16. ա Թագ. ժդ. 33. Եզեկ. խդ. 7, 15.

ե Գլ. ե. 15, 17. Թուոց ժե. 22, 27. ա Թագ. ժդ. 27. Սաղ. ժթ. 12.
զ Գլ. ը. 12.
է Գլ. թ. 2.
ը Գլ. ա. 3, 4.
թ Գլ. ժզ. 14. Թուոց ժթ. 4.
ժ Գլ. ը. 15. թ. 9. ժզ. 18.
ի Գլ. ե. 9.
լ Գլ. գ. 3, 4, 5.
խ Ել. իթ. 14. Թուոց ժթ. 5.
ծ Գլ. զ. 11.
կ Եբր. ժգ. 11.

կամունքներով մէկտեղ պիտի փըր-
16 ցընէ . Եւ քահանան սեղանին վրայ
պիտի այրէ անոնք , անուշահոտ
պատարագ ըլլալու համար . ա Ամէն
17 ճարպը Տէրոջն է ։ Ձեր ազգերուն
մէջ ձեր բոլոր բնակարաններուն
մէջ բ յաւիտենական կանոն ըլլայ ,
որ ոչ գ ճարպ ուտէք՝ ոչ ալ դ ա-
րիւն ։

## ԳԼ. Դ

1 Քահանային , 13 ժողովքին , 22 իշխանի մը , 27 և հասարակ մարդու մը անգիտութեամբ ըրած մեղքին պատարագը ։

1 Եւ Տէրը խօսեցաւ Մովսէսին՝ ըսե-
2 լով . Խօսէ Իսրայէլի որդւոցը՝
ու ըսէ . ե Թէ որ անձ մը սխալմամբ
մեղանչէ , ու Տէրոջը բոլոր արգի-
3 լած բաներուն մէկը ընէ , զ Թէ որ
օծուած քահանան ժողովուրդը
յանցաւոր ընելու մեղք մը գործելու
ըլլայ , իր գործած մեղքին համար
է արջառներէն անարատ զուարակ
մը մեղքի պատարագ մատուցանէ
4 Տէրոջը . Եւ ը ժողովքի խորանին
դուռը՝ Տէրոջը առջևը պիտի բերէ
զուարակը , ու իր ձեռքը զուարա-
կին գլխուն վրայ դնէ , և Տէրոջը
5 առջևը մորթէ զուարակը ։ Եւ
օծուած քահանան թ զուարակին
արիւնէն պիտի առնէ՝ ու ժողովքի
6 խորանը բերէ ։ Եւ քահանան իր
մատը արիւնը պիտի թաթխէ , ու
Տէրոջը առջևը՝ սրբարանին վարա-
գուրին առջևը եօթը անգամ սրսկէ
7 արիւնէն ։ Եւ քահանան արիւնէն
քիչ մը ժ պիտի դնէ Տէրոջը առջևը
անուշահոտ խունկի սեղանին եղ-
ջիւրներուն վրայ , որ ժողովքի խո-
րանին մէջն է . ու զուարակին մնացած
ի բոլոր արիւնը՝ ժողովքի խորանին
դրանը քով եղած ողջակէզի սեղա-
8 նին յատակը թափէ ։ Եւ մեղքի
պատարագ եղած զուարակին բո-
լոր ճարպը՝ այսինքն փորոտիքը
ծածկող ճարպը՝ ու փորոտիքին
վրայ եղած բոլոր ճարպը անկէ
9 պիտի վերցընէ . Եւ երկու երի-
կամունքը՝ ու կուշտին վրայ եղած
անոնց վրայի ճարպը՝ և լեարդին
վրայի թաղանթը երիկամունքնե-
10 րովը մէկտեղ պիտի փրցընէ , լ խա-
ղաղութեան զոհին արջառէն փըր-
ցուելուն պէս . և քահանան ող-
ջակէզի սեղանին վրայ պիտի այրէ
11 անոնք ։ խ Եւ զուարակին մորթը՝
ու անոր բոլոր միսը՝ գլխովը ու
ոտքերովը՝ և անոր փորոտիքը ու
12 աղբը , Այսինքն բոլոր զուարակը
բանակին դուրսի դին մաքուր տեղ
մը՝ ծ մոխիր թափուած տեղը պի-
տի հանէ , և կ փայտերու վրայ
կրակով այրէ զան . մոխիր թա-
փուած տեղը այրուի ։

13 Եւ հ Թէ որ Իսրայէլին բոլոր ժո-
ղովքը * անգիտութեամբ սխալին,
ու Տէրոջը բոլոր արգիլած բանե-
րէն մէկը ընելով՝ յանցաւոր ըլլան ,
14 Երբոր իմացուի ան ըրած մեղքեր-
նին , ժողովքը մեղքի պատարագի
համար արջառներէն զուարակ մը
պիտի մատուցանէ . ու ժողովքի
խորանին առջևը բերէ անիկայ ։
15 Եւ ժողովքին ծերերը ձ իրենց ձեռ-
քերը զուարակին գլխուն վրայ պի-
տի դնեն Տէրոջը առջևը . ու զուա-
րակը Տէրոջը առջևը պիտի մոր-
16 թուի ։ ճ Եւ օծուած քահանան
զուարակին արիւնէն ժողովքի խո-
17 րանը պիտի բերէ ։ Եւ քահանան
իր մատը արիւնը պիտի թաթխէ ,
ու Տէրոջը առջևը՝ վարագուրին
18 առջին եօթը անգամ սրսկէ ։ Եւ
արիւնէն քիչ մը ժողովքի խորանին
մէջ Տէրոջը առջևը եղած սեղանին
եղջիւրներուն վրայ պիտի դնէ . ու
մնացած բոլոր արիւնը՝ ժողովքի
խորանին դրանը քով եղած ողջա-
կէզի սեղանին յատակը թափէ ։
19 Եւ անոր բոլոր ճարպը պիտի վեր-
ցընէ անկէ , ու սեղանին վրայ այ-
20 րէ ։ Եւ մ մեղքի պատարագ եղած
զուարակին ինչպէս որ ըրաւ , աս
զուարակին ալ անանկ պիտի ընէ .
յ Ու քահանան անոնց համար քա-
ւութիւն ընէ , ու անոնց թողու-
21 թիւն ըլլայ ։ Եւ բանակէն դուրս
պիտի հանէ զուարակը , ու ինչ-
պէս որ առջի զուարակը այրեց ,
աս ալ անանկ պիտի այրէ . ժո-
ղովքին համար մեղքի պատարագ
մըն է աս ։
22 Երբոր իշխան մը մեղք գործե-
լու ըլլայ , ու իր Տէր Աստուծոյն
արգիլած բաներէն մէկը ն սխալ-
մամբ ընելով՝ յանցաւոր ըլլայ ,
23 շ Թէ որ իր ըրած մեղքը իրեն ծա-
նուցուի , իրեն համար այծերէն
արու անարատ նոխազ մը ընծայ
24 պիտի բերէ . Եւ ո իր ձեռքը նո-
խազին գլխուն վրայ պիտի դնէ , ու
զանիկայ Տէրոջը առջևը ողջակէ-
զին մորթուելու տեղը մորթէ .
25 մեղքի պատարագ մըն է աս ։ չ Եւ
քահանան մեղքի պատարագին ա-
րիւնէն իր մատովը պիտի առնէ ,
ու ողջակէզի սեղանին եղջիւրնե-
րուն վրայ պիտի դնէ , և անոր մնա-
ցած արիւնը ողջակէզի սեղանին
26 յատակը թափէ ։ Եւ անոր բոլոր
ճարպը՝ խաղաղութեան զոհին
պ ճարպին պէս՝ սեղանին վրայ պի-
տի այրէ . ջ Ու քահանան անոր
մեղքին համար քաւութիւն ընէ ,
և թողութիւն ըլլայ անոր ։
27 Եւ ռ Թէ որ երկրին ժողովուրդէն
մէկը սխալմամբ մեղանչէ՝ ու Տէ-

Ն · Ք · ՉՔ ·
1490

հ Թուոց ժե. 24. Յես. է. 11.
* Եբր. սխալին՝ ու ժողովքին աչքէն գաղտուկ պահուի բանը.
ձ Գլ. ա. 2, 3, 4, 17.
ղ Գլ. ա. 4.
ճ Հմր 5. Եբր. թ. 12, 13, 14.
մ Հմր 3.
յ Թուոց ժե. 25. Դան. թ. 24. Հռոմ. ե. 11. Եբր. բ. 17. ժ. 10, 11, 12. ա Յովհ. ա. 7. բ. 2.
ն Հմր 2, 13.
շ Հմր 14.
ո Հմր 4, եւն.
չ Հմր 30.
պ Գլ. գ. 5.
ջ Հմր 20. Թուոց ժե. 28.
ռ Հմր 2. Թուոց ժե. 27.

Ն. Ք. ԶՔ. 1490

ն Հմր 23 ։
ղ Հմր 4, 24 ։
ը Գլ. գ. 3 ։
ս Գլ. գ. 14 ։
ա Ել. իթ. 18 ։ Գլ. ա. 9 ։
ճ Հմր 26 ։
տ Հմր 28 ։
ր Գլ. գ. 5 ։
ց Հմր 26, 31 ։

ռոջը արգիլած բաներէն մէկը ընե-
28 լով՝ յանցաւոր ըլլայ , [ն]Թէ որ իր
ըրած մեղքը իրեն ծանուցուի , իր
ըրած մեղքին համար իր ընծան այ-
ծերէն անարատ էգ այծ մը պիտի
29 բերէ ։ [ղ]Եւ իր ձեռքը մեղքի պա-
տարագին գլխուն վրայ պիտի դնէ ,
ու մեղքի պատարագ եղած անա-
սունը ողջակէզներուն մորթուելու
30 տեղը մորթէ ։ Եւ քահանան իր
մատովը անոր արիւնէն պիտի առ-
նէ , ու ողջակէզի սեղանին եղջիւր-
ներուն վրան դնէ , և մնացած բոլոր
արիւնը սեղանին յատակը թափէ ։
31 Եւ անոր բոլոր ճարպը՝ խաղաղու-
թեան զոհին [ը]ճարպը փրցուելուն
պէս [ս]պիտի փրցընէ . ու քահանան
պիտի այրէ անիկայ սեղանին վրայ
[ա]անոյշ հոտի համար Տէրոջը առ-
ջեւ . [ճ]Եւ քահանան անոր համար
քաւութիւն ընէ , ու անոր թողու-
32 թիւն պիտի ըլլայ ։ Եւ թէ որ
մեղքի պատարագի համար գառն
մատուցանելու ըլլայ , անարատ
33 [տ]էգ մը պիտի բերէ . Եւ իր ձեռքը
մեղքի պատարագին գլխուն վրայ
պիտի դնէ , ու ողջակէզներուն մոր-
թուելու տեղը մեղքի պատարագի
34 համար մորթէ զան ։ Եւ քահա-
նան իր մատովը մեղքի պատարա-
գին արիւնէն պիտի առնէ , ու ող-
ջակէզի սեղանին եղջիւրներուն վը-
րան դնէ . և մնացած բոլոր արիւնը
35 սեղանին յատակը թափէ ։ Եւ
խաղաղութեան զոհէն գառին
ճարպը փրցուելուն պէս՝ անոր բո-
լոր ճարպը պիտի փրցընէ . ու
քահանան սեղանին վրայ պիտի
այրէ զան՝ [ր]Տէրոջը պատարագնե-
րուն հետ . [ց]Եւ քահանան անոր
ըրած մեղքին համար քաւութիւն
ընէ , ու թողութիւն ըլլայ անոր ։

## ԳԼ. Ե

1 Գիտցած բանին վկայութիւն չտուող մարդուն , 2 անմաքուր բանի մը դպչողին , 4 սխալմամբ անիրաւ տեղը երդում ընողին մատուցանելու յանցանքի պատարագը՝ 6 կամ հօտերէն , 7 կամ թռչուններէն , 11 և կամ բարակ ալիւրէ պիտի ըլլար ։ 14 Սուրբ բաներու մէջ յանցաւոր գտնուողին , 17 և անգիտութեամբ մեղանչողին պատարագը ։

ա Գ Թագ. ը. 31 ։ Մատ. իզ. 63 ։
բ Հմր 17 ։ Գլ. ե. 13 ։ ժէ. 16 ։ ժթ. 8 ։ ի. 17 ։ Թու. թ. 13 ։
գ Գլ. ժա. 24, 28, 31, 39 ։ Թու. ժթ. 11, 13, 16 ։
դ Հմր 17 ։
ե Գլ. ժբ. ժգ. ժե ։

1 Եւ թէ որ անձ մը մեղանչէ , ու
[ա]երդումի ձայնը լսելով՝ վկայ ըլ-
լայ , կամ բանը տեսած ըլլայ կամ
գիտցած , թէ որ չիմացընէ , [բ]յան-
2 ցանքը ինքը պիտի կրէ ։ Կամ
[գ]անձ մը անմաքուր բանի մը՝ կամ
անմաքուր գազանի մը դիին՝ կամ
անմաքուր անասունի մը դիին՝ կամ
անմաքուր սողունի մը դիին դպչե-
լու ըլլայ , թէպէտև չգիտնալով ,
անիկայ անմաքուր ու [դ]յանցաւոր
3 պիտի ըլլայ ։ Կամ [ե]մարդու ան-
մաքրութեան՝ որ և իցէ պիղծ ը-
նող անմաքրութեան դպչելու ըլ-
լայ չգիտնալով , ինքը ան գիտցած
ատենը՝ յանցաւոր պիտի ըլլայ ։
4 Կամ անձ մը՝ [զ]չարիք կամ [է]բարիք
ընելու համար իր բերնովը զըրուցե-
լով՝ երդում ընելու ըլլայ , ինչպէս
որ մարդիկ երդումով կը զըրուցեն ,
թէ որ չգիտնալով ըլլայ , ինքը ան
գիտցած ատենը ասոնց մէկուն մէջ
5 յանցաւոր պիտի ըլլայ ։ Եւ թէ
որ աս բաներէն մէկուն մէջ յան-
ցաւոր ըլլայ , անոր համար [է]իր մեղք
6 գործելը խոստովանի . Եւ իր ըրած
մեղքին համար իր յանցանքին պա-
տարագը՝ հօտերէն էգ մը , ոչխարի
էգ գառնուկ մը՝ կամ այծերէն էգ
ուլ մը մեղքի պատարագի համար
պիտի բերէ Տէրոջը . ու քահանան
քաւութիւն ընէ անոր՝ իր մեղքին
համար ։
7 Եւ [ը]թէ որ ոչխար կամ այծ բե-
րելու կարող չէ , իր ըրած յան-
ցանքին համար [թ]երկու տատրակ
կամ աղաւնիի երկու ձագեր պիտի
բերէ Տէրոջը . մէկը մեղքի պատա-
րագ , և մէկալը ողջակէզ ըլլալու
8 համար ։ Եւ քահանային պիտի
բերէ զանոնք , ու անիկայ նախ պի-
տի մատուցանէ մէկը՝ որ մեղքի
պատարագ է , և անոր գլուխը իր
9 վիզէն չզատելով՝ [ժ]փրցընէ . Եւ
մեղքի պատարագին արիւնէն սե-
ղանին քով պիտի սրսկէ , ու
[ի]մնացած արիւնը սեղանին յատա-
կը պիտի քամուի . անիկայ մեղքի
10 պատարագ է . Եւ մէկալը [լ]ըստ
օրինի ողջակէզ պիտի ընէ . [խ]ու
քահանան անոր քաւութիւն ընէ
իր ըրած մեղքին համար , և անոր
թողութիւն ըլլայ ։
11 Եւ թէ որ երկու տատրակ կամ
աղաւնիի երկու ձագեր բերելու կա-
րող չըլլայ , ան ատենը իր ըրած
մեղքին ընծային համար արդուի մը
տասներորդ մասը բարակ ալիւր պի-
տի բերէ մեղքի պատարագի հա-
մար . [ծ]ոչ անոր վրայ եղ պիտի
դնէ՝ ոչ ալ վրան կնդրուկ դնէ .
ինչու որ մեղքի պատարագ է ան ։
12 Եւ քահանային պիտի բերէ զան , ու
քահանան անկէ իր ձեռքը լեցուն
[կ]անոր յիշատակին համար առնէ ,
ու սեղանին վրայ այրէ Տէրոջը
[հ]պատարագներուն հետ . մեղքի
13 պատարագ է ան ։ [ձ]Եւ քահանան
քաւութիւն պիտի ընէ անոր՝ աս
բաներուն մէկուն մէջ ըրած մեղքին
համար , ու անոր թողութիւն ըլ-
լայ . և [ղ]մնացածը հացի ընծայի պէս
քահանային պիտի ըլլայ ։
14 Եւ Տէրը խօսեցաւ Մովսէսին՝ ը-
15 սելով . [ճ]Թէ որ անձ մը յանցանք
մը ընէ՝ ու սխալմամբ Տէրոջը սուրբ

Ն. Ք. ԶՔ. 1490

զ Տես Ա Թագ. իե. 22 ։ Գոր. իգ. 12 ։
է Տես Մար. զ. 23 ։
է Գլ. ժզ. 21 ։ իզ. 40 ։ Թու. ե. 7 ։ Եզր. ժ. 11, 12 ։
ը Գլ. ժբ. 8 ։ ժդ. 21 ։
թ Գլ. ա. 14 ։
ժ Գլ. ա. 15 ։
ի Գլ. դ. 7, 18, 30, 34 ։
լ Տես Գլ. ա. 14 ։
խ Գլ. դ. 26 ։
ծ Թու. ե. 15 ։
կ Գլ. բ. 2 ։
հ Գլ. դ. 35 ։
ձ Գլ. դ. 26 ։
ղ Գլ. բ. 3 ։
ճ Գլ. իբ. 14 ։

Ն. Ք. Գ. Ք.
1490

յ Ել. լ. 13։ Գլ. իէ. 25։
ն Եզր. ժ. 19։

բաներուն մէջ մեղք գործէ, իր
յանցանքի պատարագին համար
[յ]սրբարանին սիկղին համեմատ՝ քու
արժեցուցածիդ չափ սիկղի արծա-
թով [ն]հօտերէն անարատ խոյ մը
յանցանքի պատարագ պիտի բերէ
16 Տէրոջը։ Եւ սուրբ բաներուն մէջ
իր ըրած վնասը պիտի հատուցանէ,
ու անոր վրան [շ]հինգերորդ մաս
մըն ալ աւելցընէ, և քահանային
տայ ան. [ո]ու քահանան յանցանքի
պատարագին խոյովը քաւութիւն
ընէ անոր, և թողութիւն ըլլայ
անոր։

շ Գլ. զ. 5։ իբ. 14։ իէ. 13. 15. 27. 31։ Թու. ե. 7։
ո Գլ. դ. 26։
չ Գլ. դ. 2։

17 Եւ թէ որ [չ]անձ մը մեղանչէ,
ու Տէրոջը բոլոր արգիլած բանե-
րէն մէկը ընէ, [պ]թէև անգիտու-
թեամբ, [ջ]անիկայ յանցաւոր է,
ու իր անօրէնութիւնը պիտի կրէ։
18 Եւ քու արժեցուցածիդ պէս՝ յան-
ցանքի պատարագին համար հօտե-
րէն [ռ]անարատ խոյ մը պիտի բերէ
քահանային. [ս]ու քահանան անոր
համար քաւութիւն պիտի ընէ՝ ա-
նոր անգիտութեամբ սխալելուն
համար. և անոր թողութիւն պի-
19 տի ըլլայ։ Աս՝ յանցանքի պա-
տարագ է. [վ]անիկայ անշուշտ յան-
ցաւոր եղած է Տէրոջը առջև։

պ Հմր 15։ Գլ. դ. 2. 13. 22. 27։ Սաղ. ժթ. 12։ Ղու. ժբ. 48։
ջ Հմր 1, 2։
ռ Հմր 15։
ս Հմր 16։
վ Եզր. ժ. 2։

## ԳԼ. Զ

1 Գիտութեամբ գործուած մեղքի համար յանցանքի պատարագը։ 8 Ողջակէզին, 14 ու հացի ընծային կանոնը։ 19 Քահանայի օրհնութեան համար մատուցուելու պատարագը։ 24 Մեղքի պատարագին կանոնը։

1 Եւ Տէրը խօսեցաւ Մովսէսին՝ ըսե-
2 լով. Թէ որ անձ մը մեղանչէ,
ու Տէրոջը դէմ [ա]յանցանք մը ընէ,
և իր դրացիին [բ]ստութիւն խօսի
[գ]աւանդի մը համար՝ կամ իր ձեռ-
քը յանձնուած բանի մը համար՝ և
կամ յափշտակուած բանի մը հա-
մար, կամ [դ]իր դրացիին խարդա-
3 խութիւն ըրելու ըլլայ, կամ [ե]կոր-
սուած բան մը գտնէ, և ուրանա-
լով՝ [զ]սուտ տեղը երդում ընէ,
բոլոր աս բաներուն մէկուն մէջ՝ որ
մարդ կրնայ ընել, մեղանչելու ըլ-
4 լայ, Ան ատենը մեղք գործելուն ու
յանցաւոր ըլլալուն համար՝ բռնու-
թեամբ յափշտակած բանը՝ կամ
խարդախութեամբ առած բանը՝
կամ իրեն յանձնուած աւանդը՝
կամ գտած կորուստը ետ պիտի
5 տայ. Կամ ամէն բան՝ որուն հա-
մար սուտ տեղը երդում ըրած է,
անիկայ [է]լման պիտի հատուցանէ,
ու անոր վրայ հինգերորդ մաս մը
աւելցընէ, և իր յանցանքի պա-
տարագին օրը՝ որուն որ կը վերա-
6 բերէր՝ անոր պիտի տայ։ Եւ իր
յանցանքի պատարագը Տէրոջը պի-
տի բերէ, այսինքն՝ հօտերէն անա-

ա Թու. ե. 6։
բ Գլ. ժթ. 11։ Գոր. ե. 4։ Կող. գ. 9։
գ Ել. իբ. 7. 10։
դ Առակ. իդ. 28։ իզ. 19։
ե Օր. իբ. 1. 2. 3։
զ Ել. իբ. 11։ Գլ. ժթ. 12։ Երեմ. է. 9։ Զաք. ե. 4։
է Գլ. ե. 16։ Թու. ե. 7։ Բթագ. ժբ. 6։ Ղու. ժթ. 8։
ը Գլ. ե. 15։

րատ խոյ մը՝ քու արժեցուցածիդ
համեմատ, քահանային պիտի բերէ
յանցանքի պատարագի համար։
7 [թ]Եւ քահանան անոր համար քա-
ւութիւն պիտի ընէ Տէրոջը առջև.
և ինչ բանի համար որ յանցանք
ըրած է, թողութիւն պիտի ըլլայ
անոր։
8 Եւ Տէրը խօսեցաւ Մովսէսին՝ ը-
9 սելով. Պատուիրէ Ահարոնին ու
անոր որդւոցը՝ և ըսէ. Ողջակէզին
օրէնքը աս է. ողջակէզը բոլոր գի-
շերը մինչև առտու սեղանը եղած
կրակին վրայ պիտի ըլլայ, ու սե-
ղանին կրակը միշտ անոր մէջ վառած
10 պիտի մնայ։ [ժ]Եւ քահանան իր
քթանէ պատմուճանը պիտի հագ-
նի, ու իր քթանէ վարտիքը մար-
մինին վրայէն հագնի, և կրակով
այրուած ողջակէզին մոխիրը սեղա-
նին վրայէն պիտի վերցընէ, ու [ի]սե-
11 ղանին քովը դնէ։ Եւ [լ]իր զգեստ-
ները պիտի հանէ, և ուրիշ զգեստ-
ներ հագնի. ու մոխիրը բանակէն
դուրս [խ]մաքուր տեղ մը պիտի
12 հանէ։ Եւ սեղանին վրայի կրակը
անոր մէջ միշտ վառած պիտի ըլլայ,
ու պիտի չմարի. և քահանան ա-
մէն առտու անոր վրայ փայտեր
այրէ, ու անոր վրան ողջակէզը
շարէ, և անոր վրան [ծ]խաղաղու-
թեան զոհերուն ճարպը պիտի
13 այրէ։ Կրակը՝ սեղանին վրայ
միշտ վառած պիտի ըլլայ, ու պի-
տի չմարի։
14 [կ]Եւ հացի ընծային օրէնքը աս է.
Ահարոնին որդիքը պիտի մատու-
ցանեն անիկայ Տէրոջը առջև՝
15 սեղանին առջին։ Եւ իր ձեռքը
լեցուն անկէ՝ այսինքն հացի ընծա-
յին բարակ ալիւրէն ու անոր եղէն՝
և հացի ընծային վրայ եղած բոլոր
կնդրուկը պիտի վերցընէ, և [հ]անոր
յիշատակը սեղանին վրայ անոյշ
16 հոտի համար այրէ Տէրոջը։ Եւ
[ձ]անկէ մնացածը Ահարոնը ու անոր
որդիքը պիտի ուտեն. [ղ]անխմոր
հացեր ըլլալով՝ սուրբ տեղը պիտի
ուտուի ան. ժողովքի խորանին
17 սրահին մէջ ուտեն ան։ [ճ]Խմո-
րով պիտի չեփուի. [մ]իմ պատա-
րագներէս անոնց տուի ան՝ իրենց
բաժին ըլլալու. [յ]անիկայ մեղքի
ու յանցանքի պատարագներու պէս
18 ամենասուրբ է։ [ն]Ահարոնի որդւո-
ցը բոլոր արուները պիտի ուտեն
ան. Տէրոջը պատարագներէն՝ ձեր
ազգերուն մէջ [շ]յաւիտենական
կանոն ըլլայ աս. [ո]ամէն անոնց
դպչողը սուրբ ըլլայ։
19 Եւ Տէրը խօսեցաւ Մովսէսին՝ ը-
20 սելով. Ահարոնին ու անոր որդւոցը
օծուելու օրը՝ [չ]Տէրոջը մատու-

Ն. Ք. Գ. Ք.
1490

թ Գլ. դ. 26։
ժ Գլ. ժզ. 4։ Ել. իը. 39, 40, 41, 43։ Եզեկ. խդ. 17, 18։
ի Գլ. ա. 16։
լ Եզեկ. խդ. 19։
խ Գլ. դ. 12։
ծ Գլ. գ. 3, 9, 14։
կ Գլ. բ. 1։ Թու. ժե. 4։
հ Գլ. բ. 2, 9։
ձ Գլ. բ. 3։ Եզեկ. խդ. 29։
ղ Հմր 26։ Գլ. ժ. 12, 13։ Թու. ժը. 10։
ճ Գլ. բ. 11։
մ Թու. ժը. 9, 10։
յ Հմր 25։ Գլ. բ. 3։ է. 1։ Ել. իթ. 37։
ն Հմր 29։ Թու. ժը. 10։
շ Գլ. գ. 17։
ո Գլ. իբ. 3, 4, 5, 6, 7։ Ել. իթ. 37։
չ Ել. իթ. 2։

Ն. Բ. ԶՔ. 1490

ա Ել. ԻԹ. 36։

* Կամ՝ կտոր կտոր եղած

Հ Գլ. Դ. 3։

ա Ել. ԻԹ. 25։

ա Գլ. Դ. 2։ ա։

Հ Գլ. Ա. 3. 5. 11։ Դ. 24. 29. 33։

ա Հմր 17։ Գլ. Իա. 22։

բ Գլ. Զ. 17. 18։ Թուռ. ԺԸ. 9. 10։ Եզեկ. ԽԴ. 28. 29։

գ Հմր 16։

ա Ել. ԻԹ. 37։ Լ. 29։

Գլ. Զա. 33։ Զե. 12։

Հմր 18։ Թուռ. ԺԸ. 10։

Հմր 25։

Գլ. Դ. 7. 11. 12. 18. 21։ Զ. 18։ ԺԶ. 27։ Եբր. ԺԳ. 11։

ա Գլ. Ե. Զ. 1—7։

բ Գլ. Զ. 17. 25։ Իա. 22։

գ Գլ. Ա. 3. 5. 11։ Դ. 24. 29. 33։

դ Գլ. Գ. 4. 9. 10. 14. 15. 16։ Դ. 8. 9։ Ել. ԻԹ. 13։

ցանելու զոհերնին աս է. Ղարդուին
տասներորդ մասը բարակ ալիւր ա-
մէն օր հացի ընծայի համար պէտք
մատուցանել, կէսը առաւօտուն՝ ու
21 կէսը իրիկունը ։ Տապակի մէջ
եփելու համար՝ եղով պիտի շինուի.
* տապկած պիտի բերես զան, և հա-
ցի ընծային եփած կտորուանքները
անոյշ հոտի համար Տէրոջը պիտի
22 մատուցանես ։ Եւ իր որդիներէն
Նիր տեղը օծուելու քահանան պի-
տի մատուցանէ զան. Յաւիտենական
յաւիտենական կանոն ըլլալով բո-
23 լորովին պիտի այրուի ։ Եւ քահա-
նային ամէն հացի ընծան բոլորո-
վին պիտի այրուի, պիտի չուտուի ։
24 Եւ Տէրը խօսեցաւ Մովսէսին՝ ը-
25 սելով. Խօսէ Ահարոնին ու անոր
որդւոցը՝ և ըսէ. Մեղքի պատա-
րագին օրէնքը աս է. Ողջակէզին
մորթուած տեղը պիտի մորթուի
մեղքի պատարագը Տէրոջը առջեւ.
26 ամենասուրբ է ։ Մեղքի պա-
տարագը մատուցանող քահանան
պիտի ուտէ զան. սուրբ տեղը՝ ժո-
ղովքի խորանին սրահը պիտի ու-
27 տուի. Ինչ որ անոր միսին դպչի՝
սուրբ պիտի ըլլայ. և թէ որ անոր
արիւնէն հանդերձի մը վրայ ցաթ-
կէ, սուրբ տեղը պիտի լուաս զան՝
28 որուն վրայ ցաթկեր էր ։ Եւ հողէ
ամանը՝ որուն մէջ եռացուցուած է
զան միսը, պիտի կոտրուի. ու թէ
որ պղնձէ ամանի մէջ եռացու-
ցուած ըլլայ, պիտի շփուի՝ ու ջրով
29 լուացուի ։ Քահանայից բոլոր ա-
րուները պիտի ուտեն անիկայ. աս
30 ամենասուրբ է ։ Եւ ամէն մեղքի
պատարագը՝ որուն արիւնէն ժո-
ղովքի խորանը կը բերուի սուրբ
տեղին մէջ քաւութիւն ընելու
համար, պիտի չուտուի, կրակով
պիտի այրուի ։

## ԳԼ. Է

1 Կանոն յանցանքի պատարագին, 11 և խաղաղութեան զոհին, 12 թէ՝ շնորհակալութեան համար ըլլայ, 16 թէ ուխտի, և թէ կամաւոր ընծայի համար ։ 22 Ճարպ 26 ու արիւն ուտելը արգիլուած է ։ 28 Խաղաղութեան զոհերէն քահանայից իրաւունքը ։

1 Եւ յանցանքի պատարագին օ-
րէնքը աս է. աս ամենասուրբ
2 է. Ողջակէզը մորթած տեղերնին
յանցանքի պատարագը պիտի մոր-
թեն, և անոր արիւնը սեղանին վրայ
3 շուրջանակի պիտի սրսկէ. Եւ անկէ
բոլոր ճարպը՝ այսինքն դմակը ու
փորոտիքը ծածկող ճարպը պիտի
4 մատուցանէ. Եւ երկու երիկա-
մունքը՝ ու կուշտին վրայ եղած ա-
նոնց վրայի ճարպը՝ և լեարդին
վրայի թաղանթը՝ երիկամունքնե-
5 րով մէկտեղ պիտի փրցընէ. Եւ
քահանան սեղանին վրայ պիտի
այրէ զանոնք՝ Տէրոջը պատարագ ըլ-
լալու. անիկայ յանցանքի պատա-
6 րագ է ։ Քահանայից ամէն արուն
պիտի ուտէ զան. սուրբ տեղը պիտի
ուտուի, քանզի ամենասուրբ է ։
7 Մեղքի պատարագը ինչպէս որ է ըլ-
լայ, յանցանքի պատարագն ալ
անանկ ըլլայ. անոնց օրէնքը մէկ է.
անով քաւութիւն ընող քահա-
8 նային պիտի ըլլայ զան ։ Եւ քահա-
նայ մը որ մէկուն ողջակէզը կը
մատուցանէ, ան քահանան իր
մատուցած ողջակէզին մորթը իրեն
9 պիտի առնէ ։ Եւ բոլոր թոնիրի
մէջ եփուած՝ ու բոլոր սանի մէջ և
տապակի վրայ շինուած հացի ըն-
ծան՝ զանիկայ մատուցանող քահա-
10 նային պիտի ըլլայ ։ Եւ ամէն եղով
շաղուած կամ առանց եղի՝ հացի
ընծան՝ Ահարոնին բոլոր որդւոցը
պիտի ըլլայ. ամէն մէկուն բաժինը
հաւասար պէտք ըլլայ ։
11 Եւ Տէրոջը մատուցանելու խա-
ղաղութեան զոհին օրէնքը աս է.
12 Թէ որ շնորհակալութեան համար
մատուցանէ զան, ան ատենը շնոր-
հակալութեան զոհին հետ եղով
շաղուած անխմոր շօթեր՝ ու եղով
օծուած անխմոր լաւաշներ՝ և բա-
րակ ալիւրէ եղով շաղուած՝ տապ-
կած շօթեր պիտի մատուցանէ ։
13 Շնորհակալութեան համար եղած
խաղաղութեան զոհին շօթերէն
զատ՝ խմորեալ հացէ ընծայ մը պի-
14 տի մատուցանէ ։ Եւ անկէ՝ այսինքն
ամէն ընծաներէն մէկ հատ բարձ-
րացընելու ընծայ պիտի մատուցա-
նէ Տէրոջը. և անիկայ խաղաղու-
թեան զոհին արիւնը սրսկող քա-
15 հանային պիտի ըլլայ ։ Եւ շնորհա-
կալութեան համար՝ խաղաղու-
թեան զոհին միսը մատուցուած
օրը պիտի ուտուի. անկէ մինչև
16 առտու պիտի չմնայ ։ Եւ թէ որ
իր ընծան ուխտի համար է կամ
կամաւոր զոհ է, զոհը մատուցած
օրը պիտի ուտուի, ու մնացածը
17 հետևեալ օրը պիտի ուտուի. Եւ
զոհին միսէն երրորդ օրուան մնա-
18 ցածը կրակով պիտի այրուի ։ Եւ
թէ որ երրորդ օրը իր խաղաղու-
թեան զոհին միսէն ուտուելու ըլ-
լայ, ընդունելի պիտի չըլլայ, ոչ ալ
անիկայ մատուցանողին հաշուած պիտի
սեպուի. պղծութիւն պիտի ըլ-
լայ, ու անկէ ուտող անձը՝ իր ա-
19 նօրէնութիւնը պիտի կրէ ։ Եւ ա-
մէն պիղծ բանի դպած
միսը պիտի չուտուի, կրակով պի-
տի այրուի. սակայն ամէն մաքուր
եղողը պիտի ուտէ խաղաղութեան
20 զոհին միսէն ։ Բայց ան անձը՝ որ

Ն. Բ. ԶՔ. 1490

Գլ. Զ. 16. 17. 18։ Թուռ. ԺԸ. 9. 10։

Գլ. Բ. 3։

Գլ. Զ. 25. 26։ ԺԴ. 13։

Գլ. Բ. 3. 10։ Թուռ. ԺԸ. 9։ Եզեկ. ԽԴ. 29։

† Եբր. Լոր

Գլ. Գ. 1։ ԻԲ. 18. 21։

Գլ. Բ. 4։ Թուռ. Զ. 15։

Ամով. Դ. 5։

Թուռ. ԺԸ. 8. 11. 19։

Գլ. ԻԲ. 30։

Գլ. ԺԹ. 6. 7. 8։

Թուռ. ԺԸ. 27։

Գլ. ԺԱ. 10. 11. 41։ ԺԹ. 7։

Ն. Ք. ԳՔ
1490

ձ իր անմաքրութիւնը իր վրան ու-
նենալով Տէրոջը խաղաղութեան
զոհէն միս ուտէ, այն անձը ղիր
21 ժողովուրդէն պիտի կորսուի։ Եւ
ամէն տեսակ անմաքուր բանի մը՝ թէ
ճմարդու անմաքրութեան՝ թէ
մանմաքուր անասունի՝ և թէ յա-
մէն կերպ անմաքուր *պիղծ բանի"
մը դպչող անձը՝ թէ որ Տէրոջը
խաղաղութեան զոհին միսէն ու-
տելու ըլլայ, այն անձը նիր ժողո-
վուրդէն պիտի կորսուի։
22 Եւ Տէրը խօսեցաւ Մովսէսին՝
23 ըսելով. Խօսէ Իսրայէլի որդւոցը
ու ըսէ. շԲնաւ արջառի կամ ոչ-
խարի կամ այծի ճարպ պիտի չու-
24 տէք։ Եւ ոմեռած անասունին
ճարպը՝ ու փառատուածին ճարպը՝
ամէն գործի մէջ պիտի գործա-
ծուի, բայց անկէ բնաւ պիտի չու-
25 տէք։ Քանզի ով որ Տէրոջը պա-
տարագ մատուցուելու անասունին
ճարպէն ուտելու ըլլայ, այն ուտող
անձը իր ժողովուրդէն պիտի կոր-
26 սուի։ չԵւ ձեր ամէն բնակարան-
ներուն մէջ բնաւ արիւն պիտի
չուտէք, թէ՛ թռչունի ըլլայ և
27 թէ անասունի։ Ամէն անձ որ ինչ
և իցէ արիւն ուտէ, այն անձը իր
ժողովուրդէն պիտի կորսուի։
28 Եւ Տէրը խօսեցաւ Մովսէսին՝
29 ըսելով. Խօսէ Իսրայէլի որդւոցը՝
ու ըսէ. պԻր խաղաղութեան զոհը
Տէրոջը մատուցանողը՝ իր խաղա-
ղութեան զոհէն ընծայ մը պիտի
30 բերէ Տէրոջը։ ջՏէրոջը պատա-
րագը իր ձեռքովը պիտի բերէ. եր-
բուծով ճարպը պիտի բերէ, որ
ռերբուծը երերցընելու ընծայի հա-
մար երերցուի Տէրոջը առջեւ։
31 սԵւ քահանան ճարպը պիտի այրէ
սեղանին վրայ. վբայց երբուծը Ա-
հարոնին ու անոր որդւոցը պիտի
32 ըլլայ։ Եւ ձեր խաղաղութեան
զոհերէն տաջ զիստը քահանային
պիտի տաք՝ բարձրացընելու ընծա-
33 յի համար։ Ահարոնի որդւոց-
մէն՝ խաղաղութեան զոհին արիւնը
ու ճարպը ով որ մատուցանէ, աջ
զիստը անոր բաժինը պիտի ըլլայ։
34 Քանզի անոնց խաղաղութեան զո-
հերէն րերերցընելու երբուծը և
բարձրացընելու զիստը Իսրայէլի
որդւոցմէն առի, և անոնք յաւի-
տենական կանոնով Իսրայէլի որ-
դւոցմէն Ահարոն քահանային ու
35 անոր որդւոցը տուի։ Ասիկայ Տէ-
րոջը պատարագներէն Ահարոնին և
անոր որդւոցը օծման իրաւունքի
համար տրուեցաւ, զանոնք Տէրոջը
քահանայութիւն ընելու մօտեցու-
36 ցած օրը, Որ ցզանոնք օծած օրը
Տէրը հրամայեց որ Իսրայէլի որ-
դւոցմէն իրենց ցեղերուն մէջ յա-
ւիտենական կանոնով անոնց տը-
րուի։
37 աՈղջակէզին՝ բհացի ընծային՝
գև մեղքի պատարագին՝ դև յան-
ցանքի պատարագին՝ եու օրհնու-
թիւններուն՝ և զխաղաղութեան
38 զոհին օրէնքը աս է, Որ Տէրը պա-
տուիրեց Մովսէսին Սինայ լեռը,
այն օրը՝ որ Իսրայէլի որդւոցը պա-
տուիրեց էիրենց ընծաները Տէրոջը
մատուցանելու Սինայի անապատին
մէջ։

Ն. Ք. ԳՔ. 1490

յ Ղւ. ժե. 3։ ղ Ծն. ժէ. 14։ ճ Ղւ. ժբ. ժգ. ժե։ մ Ղւ. ժա. 24, 28։ յ Եզեկ. դ. 14։ * Կամ՝ սողունի։ ն Հմր 20։ շ Ղւ. գ. 17։ ո Ղւ. ժէ. 15։ բ Օր. ժդ. 21։ Եզեկ. դ. 14։ խդ. 31։ չ Ծն. թ. 4։ Ղւ. գ. 17։ ժէ. 10-14։ պ Ղւ. գ. 1։ ջ Ղւ. գ. 3, 4, 9, 14։ ռ Ել. իթ. 24, 27։ Ղւ. ը. 27։ թ. 21։ Թու. զ. 20։ ս Ղւ. գ. 5, 11, 16։ վ Հմր 34։ տ Հմր 34։ Ղւ. թ. 21։ Թու. զ. 20։ ր Ել. իթ. 28։ Ղւ. ժ. 14, 15։ Թու. ժը. 18, 19։ բ Օր. ժը. 3։ ց Ղւ. ը. 12, 30։ Ել. խ. 13, 15։

ա Ղւ. զ. 9։ բ Ղւ. զ. 14։ գ Ղւ. զ. 25։ դ Հմր 1։ ե Ղւ. զ. 20։ Ել. իթ. 1։ զ Հմր 11։ է Ղւ. ա. 2։

## ԳԼ. Ը

1 Մովսէս քահանայ կ'օրհնէ Ահարոնը ու անոր որդիքը։ 14 Անոնց մեղքի պատարագը։ 18 Անոնց ողջակէզը։ 22 Օրհնութեան խոյը։ 31 Անոնց օրհնուելուն տեղը ու ժամանակը։

1 Եւ Տէրը խօսեցաւ Մովսէսին՝ ը-
2 սելով. աԱ՛ռ Ահարոնը ու ա-
նոր որդիքը իր հետը, և բզգեստ-
ները՝ ու գօծման եղը՝ և մեղքի
պատարագին զուարակը՝ ու երկու
խոյերը՝ և անխմոր հացին սակառը.
3 Եւ ժողվէ բոլոր ժողովքը մէկտեղ
4 ժողովքի խորանին դուռը։ Եւ
Մովսէս Տէրոջը իրեն պատուիրա-
ծին պէս ըրաւ. ու ժողովքը մէկ-
տեղ ժողվուեցաւ ժողովքի խորա-
5 նին դուռը։ Եւ Մովսէս ըսաւ
ժողովքին. դԱս է այն բանը որ
6 Տէրը պատուիրեց ընելու։ Եւ
Մովսէս մօտեցուց Ահարոնը ու ա-
նոր որդիքը, եև զանոնք ջրով
7 լուաց. զԵւ անոր հագցուց էշա-
պիկը, ու անոր մէջքը կապեց գօ-
տին, և պատմուճանը հագցուց ա-
նոր, ու եփուտը անոր վրայ դրաւ,
ու եփուտին ժապաւէնովը փաթ-
թեց, ու անով գօտեւորեց զանի-
8 կայ։ Եւ լանջապանակը անոր
վրայ դրաւ, ու ըլանջապանակին
մէջ Ուրիմը ու Թումիմը դրաւ.
9 թԵւ խոյրը անոր գլուխը դրաւ, ու
խոյրին վրայ՝ անոր առջևի կողմէն
ոսկի թիթեղը՝ այսինքն սուրբ պսա-
կը դրաւ, Տէրոջը ժՄովսէսին պա-
տուիրածին պէս։
10 իԵւ Մովսէս օծման եղը առաւ,
ու խորանը և բոլոր անոր մէջի ե-
ղածները օծեց, ու սրբեց անոնք.
11 Եւ անկէ սեղանին վրայ սրսկեց
եօթը անգամ. և սեղանը ու անոր
բոլոր գործիքները՝ և աւազանը ու
անոր խարիսխը օծեց, զանոնք սըր-
12 բելու համար։ Եւ լօծման եղէն
Ահարոնին գլխուն վրայ թափելով՝
13 անիկայ սրբելու համար օծեց։ խԵւ
Մովսէս մօտեցուց Ահարոնին որ-
դիները՝ ու անոնց շապիկներ հագ-
ցուց, և մէջքերնին գօտի կապեց,
ու անոնց գլուխը ապարօշներ փաթ-

ա Ել. իթ. 1, 2, 3։ բ Ել. իը. 2, 4։ գ Ել. լ. 24, 25։ դ Ել. իթ. 4։ ե Ել. իթ. 4։ զ Ել. իթ. 5։ է Ել. իը. 4։ ը Ել. իը. 30։ թ Ել. իթ. 6։ ժ Ել. իը. 37։ ի Ել. լ. 26, 27, 28, 29։ լ Ղւ. իա. 10, 12։ Ել. իթ. 7։ լ. 30։ Սղ. ճլգ. 2։ խ Ել. իթ. 8, 9։

Ն . Ք . ԳԾ .
1490

թեց , Տէրոջը Մովսէսին պատուի-
րածին պէս ։
14 ծԵւ մեղքի պատարագին զուա-
րակը մօտեցուց . և Ահարոն ու ա-
նոր որդիքը էիրենց ձեռքերը մեղ-
քի պատարագ ըլլալու զուարակին
15 գլխուն վրայ դրին ։ Եւ մորթեց
զանիկայ . հև Մովսէս արիւնը ա-
ռաւ , ու իր մատովը սեղանին եղ-
ջիւրներուն վրայ դնելով շուրջա-
նակի , մաքրեց սեղանը . ու արիւ-
նը սեղանին յատակը թափեց , և
անոր վրայ քաւութիւն ընելու հա-
16 մար՝ սրբեց զան ։ յԵւ փորոտիքին
վրան եղած բոլոր ճարպը՝ և լեար-
դին թաղանթը՝ ու երկու երիկա-
մունքը՝ և անոնց ճարպը առաւ ,
ու Մովսէս սեղանին վրայ այրեց
17 զանոնք ։ Բայց զուարակը՝ այսինքն
անոր մորթը և միսը՝ ու անոր աղ-
բը՝ բանակին դուրսի դին կրակով
այրեց , Տէրոջը ըՄովսէսին պա-
տուիրածին պէս ։
18 ճԵւ ողջակէզին խոյը մօտեցուց .
և Ահարոնը ու անոր որդիքը ի-
րենց ձեռքերը խոյին գլխուն վրայ
19 դրին ։ Եւ մորթեց զանիկայ . և
Մովսէս շուրջանակի սեղանին վրայ
20 սրսկեց արիւնը . Եւ խոյը կտոր
կտոր ըրաւ . ու Մովսէս այրեց
գլուխը և կտորները ու ճարպը .
21 Եւ փորոտիքը ու ոտքերը ջրով
լուաց . և Մովսէս բոլոր խոյը սե-
ղանին վրայ այրեց . ասիկայ ող-
ջակէզ ու անուշահոտ պատարագ
մըն էր Տէրոջը , մինչպէս որ Տէրը
Մովսէսին պատուիրեց ։
22 Եւ յմօտեցուց միւս խոյը , այսինքն
օծման խոյը . և Ահա-
րոն ու անոր որդիքը իրենց ձեռ-
քերը խոյին գլխուն վրայ դրին .
23 Եւ մորթեց զանիկայ . ու Մովսէս
անոր արիւնէն առաւ , և Ահարո-
նին աջ ականջին բլթակին վրայ՝
ու անոր աջ ձեռքին մեծ մատին
վրայ՝ և անոր աջ ոտքին մեծ մա-
24 տին վրայ դրաւ ։ Եւ Ահարոնին
որդիքը մօտեցուց , ու Մովսէս
ան արիւնէն անոնց աջ ականջ-
ներուն բլթակներուն վրայ՝ և ա-
նոնց աջ ձեռքերուն մեծ մատե-
րուն վրայ՝ ու անոնց աջ ոտքե-
րուն մեծ մատերուն վրայ դրաւ . և
Մովսէս սեղանին վրայ շուրջանա-
25 կի սրսկեց մնացած արիւնը ։ նԵւ
ճարպը՝ դմակը՝ ու փորոտիքին վը-
րան եղած բոլոր ճարպը՝ և լեարդին
թաղանթը՝ ու երկու երիկամուն-
քը՝ և անոնց ճարպը՝ ու աջ զիստը
26 առաւ . շԵւ Տէրոջը առջևը եղած
անխմոր հացի սակառէն անխմոր
շօթ մը՝ եղով հացի շօթ մը ու
լաւաշ մը առաւ , և ճարպերուն

ծ Եւ . Ի Թ . 10 ։ Եզեկ . Խգ . 19 ։
է Գւ . դ . 4 ։
հ Եւ . Ի Թ . 12 , 36 ։ Գւ . դ . 7 ։ Եզեկ . Խգ . 20 , 26 ։ Եբր . Թ . 22 ։
յ Եւ . Ի Թ . 13 ։ Գւ . դ . 8 ։
ը Գւ . դ . 11 , 12 ։ Եւ . Ի Թ . 14 ։
ճ Եւ . Ի Թ . 15 ։
մ Եւ . Ի Թ . 18 ։
յ Եւ . Ի Թ . 19 , 31 ։
ն Եւ . Ի Թ . 22 ։
շ Եւ . Ի Թ . 23 ։

27 վրայ ու աջ զիստին վրայ դրաւ ։ Եւ
ամէնը ոԱհարոնին ու անոր որդւո-
ցը ձեռքը դնելով՝ զանոնք Տէրոջը
առջևը երերցընելու ընծայ *մա-
28 տուց ։ չԵւ Մովսէս անոնց ձեռ-
քէն առաւ զանոնք , ու սեղանը
եղած ողջակէզին վրայ այրեց . ա-
սոնք օծման համար անուշա-
29 հոտ պատարագ էին Տէրոջը ։ Եւ
Մովսէս երբուծը առաւ , ու Տէ-
րոջը առջևը երերցընելու ընծայ
մատուց . ասիկայ օծման խո-
յէն Մովսէսին պբաժինը եղաւ ,
Տէրոջը Մովսէսին պատուիրածին
30 պէս ։ Եւ ջՄովսէս օծման եղէն ու
սեղանին վրան եղած արիւնէն ա-
ռնելով՝ Ահարոնին վրայ ու անոր
հանդերձներուն վրայ՝ և անոր հետ
անոր որդւոցը վրայ ու անոր որ-
դւոցը հանդերձներուն վրայ սրսկեց .
և Ահարոնը ու անոր հանդերձները՝
և անոր հետ անոր որդիքը ու անոր
որդւոցը հանդերձները սրբեց ։
31 Եւ Մովսէս ըսաւ Ահարոնին ու
անոր որդւոցը . ռՄիսը ժողովքի
խորանին դրանը քով եռացուցէք ,
և հոն օծման սակառին մէջի
հացերովը կերէք զանիկայ , ինչպէս
որ սինծի պատուիրուեցաւ՝՝ ըսելով
թէ՝ Ահարոնը ու անոր որդիքը պի-
32 տի ուտեն զանոնք ։ վԵւ միսէն ու
հացէն աւելցածը կրակով այրեցէք ։
33 Եւ եօթը օր ժողովքի խորանին
դռնէն դուրս մի՛ ելլէք , մինչև ձեր
օծման օրերուն վերջին օրը .
ինչու որ տձեր օծումթիւնը եօթը
34 օրը կ'ըլլայ ։ րԱս օրուան եղածին
պէս՝ ձեզի համար քաւութիւն ը-
նելու՝ Տէրը հրաման ըրաւ ասանկ
35 ընել ։ Ուստի ցորեկը ու գիշերը
եօթը օր ժողովքի խորանին դրանը
քով պիտի նստիք , ու ցՏէրոջը
պահպանութիւնը պիտի ընէք՝ որ
չմեռնիք . քանզի ասանկ պատուի-
36 րուած է ինծի Տէրոջմէն ։ Եւ Ահա-
րոն ու անոր որդիքը Տէրոջը Մով-
սէսին ձեռքովը պատուիրած ամէն
բաները ըրին ։

Ն . Ք . ԳԾ .
1490

ո Եւ . Ի Թ . 24 , Ա ։
* Եբր . երերցուց ։
չ Եւ . Ի Թ . 25 ։
պ Եւ . Ի Թ . 26 ։
ջ Եւ . Ի Թ . 21 ։ Լ . 30 ։ Թուոց . գ . 3 ։
ռ Եւ . Ի Թ . 31 , 32 ։
ս Կամ՝ ես պատուիրեցի՝
վ Եւ . Ի Թ . 34 ։
տ Եւ . Ի Թ . 30 , 35 ։ Եզեկ . Խգ . 25 , 26 ։
ր Եբր . Է . 16 ։
ց Թուոց . Գ . 7 ։ Թ . 19 ։ Գ Օր . Ժա . 1 ։ Գ Թագ . Բ . 3 ։

## ԳԼ . Թ

1 Ահարոնին մատուցած առջի պատարագները՝ իրեն համար ու ժողովուրդին համար ։ 8 Մեղքի պատարագը , 12 ու իրեն համար մատուցած ողջակէզը ։ 15 Ժողովուրդին համար եղած պատարագները ։ 23 Մովսէս ու Ահարոն ժողովուրդը կ'օրհնեն ։ 24 Տէրոջմէ կրակ կու գայ սեղանին վրայ ։

1 Եւ աեղաւ որ ութերորդ օրը Մով-
սէս կանչեց Ահարոնը ու անոր
2 որդիքը և Իսրայէլի ծերերը . Եւ ը-
սաւ Ահարոնին . բԱ՛ռ քեզի մեղքի
պատարագի համար զուարակ մը ,
գու ողջակէզի համար խոյ մը . ա-
նոնք անարատ ըլլան . և Տէրոջը առ-

ա Եզեկ . Խգ . 27 ։
բ Գւ . դ . 3 ։ Ը . 14 ։ Եւ . Ի Թ . 1 ։
գ Գւ . Ը . 18 ։

Ն․ Ք․ ԳՔ․ 1490

տ Գլ․ դ․ 23, Եզր․ զ․ 17, ժ․ 19։
ի Գլ․ ը․ 4։
լ Հմր 6, 23, Ել․ իթ․ 43։
խ Հմր 23, Ել․ իդ․ 16։
ծ Գլ․ դ․ 3, ա Թագ․ գ․ 14, Եբր․ ե․ 3, է․ 27, թ․ 7։
կ Գլ․ դ․ 16, 20, Եբր․ ե․ 1։
հ Գլ․ ը․ 15։
ձ Տես Գլ․ գ․ 7։
ղ Գլ․ ը․ 16։
ճ Գլ․ դ․ 8։
մ Գլ․ դ․ 11, ը․ 17։
յ Գլ․ ա․ 5, ը․ 19։
ն Գլ․ ը․ 20։
շ Գլ․ ը․ 21։
ո Հմր 8, Եսա․ ծգ․ 10, Եբր․ բ․ 17, ե․ 3։
չ Գլ․ ա․ 3, 10։
պ Հմր 4, Գլ․ բ․ 1, 2։
ջ Ել․ իթ․ 38։
ռ Գլ․ գ․ 1, ա։

3 ջև՛ը մօտեցուր ։ Եւ Իսրայէլի որդուո-
ցը պիտի խօսիս՝ ըսելով ․ [տ] Մեղքի
պատարագի համար այծերէն նո-
խազ մը՝ և ողջակէզի համար զուա-
րակ մը ու գառնուկ մը առէք ․ մէկ
4 տարեկան՝ անարատ ըլլան ։ Նաև
խաղաղութեան զոհերուն համար
Տէրոջը առջևը զոհելու արջառ մը
ու խոյ մը՝ ու [ի] եղով շաղուած հացի
ընծայ պէտք առնէք ․ ինչու որ [լ] այս-
5 օր Տէրը ձեզի պիտի երևնայ ։ Եւ
Մովսէսին պատուիրածը ժողովքի
խորանին առջևը բերին ․ ու բոլոր
ժողովքը մօտեցան՝ ու Տէրոջը
6 առջևը կայնեցան ։ Եւ Մովսէս ը-
սաւ ․ Աս է Տէրոջը պատուիրած
բանը ․ աս ըրէք , ու [խ] Տէրոջը
7 փառքը ձեզի պիտի երևնայ ։ Եւ
Մովսէս ըսաւ Ահարոնին ․ Սեղանին
մօտեցիր , ու [ծ] քու մեղքի պատա-
րագդ և ողջակէզդ ըրէ , և քեզի
համար ու ժողովուրդին համար
քաւութիւն ըրէ ․ և [կ] ժողովուր-
դին ընծան մատուցանելով՝ անոնց
համար քաւութիւն ըրէ՝ Տէրոջը
պատուիրածին պէս ։
8 Ուստի Ահարոնը սեղանին մօտե-
ցաւ , և իրեն համար եղած մեղքի
պատարագին զուարակը մորթեց ։
9 [հ] Եւ Ահարոնին որդիքը արիւնը մօ-
տեցուցին անոր ․ ու անիկայ իր մա-
տը արիւնը թաթխեց , ու [ձ] սեղա-
նին եղջիւրներուն վրայ դրաւ ․ և
մնացած արիւնը սեղանին յատակը
10 թափեց ․ [ղ] Բայց մեղքի պատարա-
գէն՝ ճարպը ու երիկամունքները և
լեարդին թաղանթը սեղանին վրայ
այրեց , ինչպէս որ [ճ] Տէրը Մովսէսին
11 պատուիրեր էր ։ [մ] Եւ միսը ու մոր-
թը բանակին դուրսի դին կրակով
12 այրեց ։ Եւ ողջակէզը մորթեց ․ ու
Ահարոնին որդիքը արիւնը անոր
բերին , և [յ] սեղանին վրայ չուրջա-
13 նակի սրսկեց ան ։ [ն] Եւ ողջակէզը
կտորներովը ու գլխովը անոր բե-
14 րին , և սեղանին վրայ այրեց ։ [շ] Եւ
փորոտիքը ու ոտքերը լուաց , ու
սեղանին վրայի ողջակէզին վրայ
այրեց ։
15 [ո] Եւ ժողովուրդին ընծան մօտե-
ցուց , ու ժողովուրդին համար մեղ-
քի պատարագ ընծայելու նոխազը ա-
ռաւ , և մորթեց անիկայ , ու մեղ-
քի պատարագ ըրաւ առջինին
16 պէս ։ Եւ ողջակէզը մօտեցուց , ու
17 [չ] ըստ օրէնքի մատուց ։ Եւ [պ] հացի
ընծան մօտեցուց , ու անկէ ձեռքը
լեցուց՝ և սեղանին վրայ այրեց ,
[ջ] առաւօտեան ողջակէզէն 'ի զատ ։
18 Եւ ժողովուրդին [ռ] խաղաղութեան
զոհ ընծայելու արջառը ու խոյը մոր-
թեց ․ և Ահարոնին որդիքը արիւնը
անոր բերին , ու սեղանին վրայ

Ն․ Ք․ ԳՔ․ 1490

ս Գլ․ գ․ 5, 16։
վ Ել․ իթ․ 24, 26, Գլ․ է․ 30, 31, 32, 33, 34։
տ Թուոց․ զ․ 23, բ Օր․ իա․ 5, Ղուկ․ իդ․ 50։
ր Հմր 6, Թուոց․ ժդ․ 10, ժզ․ 19, 42։
ց Ծն․ դ․ 4, Դատ․ զ․ 21, գ Թագ․ ժը․ 38, բ Մն․ է․ 1, Սաղ․ ի․ 3։
ւ գ Թագ․ ժը․ 39, բ Մն․ է․ 3, Եզր․ գ․ 11։

19 չուրջանակի սրսկեց ան ։ Եւ ար-
ջառէն՝ ճարպերը , ու խոյէն՝
դմակը և փորոտիքը ծածկող ճարպը ,
ու երիկամունքները ու լեարդին
20 թաղանթը բերին ․ Եւ ճարպերը
երբուծներուն վրայ դրին , [ս] ու
ճարպերը սեղանին վրայ այրեց ։
21 Եւ Ահարոն՝ երբուծները ու աջ
զիստը Տէրոջը առջևը [վ] երերցնելու
ընծայ մատուց , Մովսէսին պա-
տուիրածին պէս ։
22 Եւ Ահարոն իր ձեռքերը ժողո-
վուրդին վրայ վերցուց , [տ] ու օրհնեց
զանոնք ․ և մեղքի պատարագը ու
ողջակէզը և խաղաղութեան զոհերը
23 մատուցանելէն ետքը՝ իջաւ ։ Եւ
Մովսէս ու Ահարոն ժողովքի խո-
րանը մտան , և անկէ ելլելով ժողո-
վուրդը օրհնեցին ․ [ր] և Տէրոջը փառ-
քը բոլոր ժողովուրդին երևցաւ ։
24 Եւ [ց] Տէրոջը առջևէն կրակ ելաւ , ու
սեղանին վրայ եղած ողջակէզը և
ճարպերը այրեց ․ և բոլոր ժողո-
վուրդը տեսնելով՝ [ւ] աղաղակեցին ,
ու երեսնուն վրայ ինկան ։

ԳԼ․ Ժ

1 Նադաբ ու Աբիուդ օտար կրակ մատուցանելնուն համար՝ կրակով կ'այրուին ։ 6 Ահարոնին ու անոր մնացած որդւոցը կը պատուիրուի որ անոնց համար սուգ չընեն ։ 8 Քահանայից գինի խմելը կ'արգիլուի՝ խորանը մտնելու ժամանակնին ։ 12 Սուրբ բաները ուտելուն կանոնը ։ 16 Ահարոն աս կանոնը զանց ընելէն ետքը՝ զինքը կ'արդարացընէ ։

ա Գլ․ ժզ․ 1, իբ․ 9, Թուոց․ գ․ 3, 4, իզ․ 61, ա Մն․ իդ․ 2։
բ Գլ․ ժզ․ 12, Թուոց․ ժզ․ 18։
գ Ել․ լ․ 9։
դ Գլ․ թ․ 24, Թուոց․ ժզ․ 35, բ Թագ․ զ․ 7։
ե Ել․ ժթ․ 22, իթ․ 43, Գլ․ իա․ 6, 17, 21, Եսա․ ծբ․ 11, Եզեկ․ ի․ 41, իբ․ 18։
զ Եսա․ խթ․ 3, Եզեկ․ իը․ 22, Յով․ ժգ․ 31, 32, ժէ․ 13, բ Թես․ ա․ 10։
է Սաղ․ լթ․ 9։
ը Ել․ զ․ 18, 22, Թուոց․ գ․ 19, 30։
թ Ղուկ․ է․ 12, Գործ․ ե․ 6, 9, 10, ը․ 2։
ժ Ել․ լգ․ 5, Գլ․ ժգ․ 45, իա․ 1, 10, Թուոց․ զ․ 6, 7, բ Օր․ լգ․ 9, Եզեկ․ իդ․ 16, 17։

1 Եւ [ա] Ահարոնին որդիքը Նադաբ ու
Աբիուդ՝ [բ] ամէն մէկը իր բուր-
վառը առաւ , ու անոնց մէջը կրակ
դրին , և վրան խունկ դրին , ու
Տէրոջը առջևը [գ] օտար կրակ մա-
տուցին , որ ինքը պատուիրած չէր
2 անոնց ։ Եւ [դ] Տէրոջը առջևէն
կրակ ելաւ , ու սպառեց զանոնք ,
3 և Տէրոջը առջևը մեռան ։ Ան ա-
տենը Մովսէս ըսաւ Ահարոնին ․
Աս է որ Տէրը խօսեցաւ՝ ըսելով ․
[ե] Ինծի մօտեցողներուն մէջ սուրբ
պիտի սեպուիմ , ու բոլոր ժողո-
վուրդին առջևը պիտի [զ] փառաւո-
րուիմ ․ [է] և Ահարոն լուռ կեցաւ ։
4 Եւ Մովսէս կանչեց Ահարոնին հօ-
րեղբօրը [ը] Ոզիէլին որդիքը Միսայէ-
լը ու Եղիսափանը , և ըսաւ անոնց ․
Մօտեցէ՛ք , [թ] ձեր եղբայրները սրբա-
րանին առջևէն բանակին դուրսի
5 դին վերցուցէք ․ Եւ անոնք մօ-
տեցան , ու Մովսէսին ըսածին
պէս՝ զանոնք իրենց շապիկներովը
բանակէն դուրս վերցուցին ։
6 Եւ Մովսէս ըսաւ Ահարոնին՝ ու
անոր որդւոցը Եղիազարին և Իթա-
մարին ․ [ժ] Գլուխնիդ մի՛ բանաք , ու
հանդերձնիդ մի՛ պատռէք , որ
չմեռնիք , և բոլոր ժողովուրդին

Ն. Ք. ԴԻ.
1490

վրայ բարկութիւն չգայ . բայց ձեր
եղբայրները Իսրայէլի բոլոր տունը՝
Տէրոջը ըրած այրումին վրայ թող
7 լան ։ [զ] Եւ դուք ժողովքի խորանին
դռնէն դուրս մի՛ ելլէք , որ չմեռ-
նիք . [է] ինչու որ Տէրոջը օծման եղը
վրանիդ է . և անոնք Մովսէսին ը-
սածին պէս ըրին ։
8 Եւ Տէրը խօսեցաւ Ահարոնին՝
9 ըսելով . [ը] Երբոր ժողովքի խորանը
մտնէք՝ թէ դուն և թէ քու որ-
դիքդ քեզի հետ , գինի կամ օղի
չխմէ՛ք , որ չմեռնիք . ասիկայ ձեր
ազգերուն մէջ յաւիտենական կա-
10 նոն ըլլայ , Որ սուրբին ու անսուր-
բին մէջտեղը , և անմաքուրին ու
մաքուրին մէջտեղը [թ] տարբերու-
11 թիւն ընէք . [ժ] Եւ որ Իսրայէլի որ-
դւոցը սորվեցընէք բոլոր կանոն-
ները , որ Տէրը Մովսէսին ձեռ-
քովը գրուցած է անոնց ։
12 Եւ Մովսէս խօսեցաւ Ահարոնին՝
ու անոր մնացած որդւոցը Եղիազա-
րին ու Իթամարին . [ի] Տէրոջը պա-
տարագներէն աւելցած հացի ընծան
առէք , ու սեղանին քովը բաղա՛րջ
կերէ՛ք . ինչու որ [լ] անիկայ ամենա-
13 սուրբ է ։ Սուրբ տեղը կերէք ա-
նիկայ . ինչու որ Տէրոջը պատարագ-
ներէն քու իրաւունքդ ու քու որ-
դւոցդ իրաւունքն է . քանզի [խ] ինծի
14 ասանկ պատուիրուած է ։ Եւ [ծ] ե-
րերցընելու երբուծը ու բարձրացը-
նելու զիստը՝ դուն ու քու որդիքդ
և քու աղջիկներդ քու հետդ մա-
քուր տեղ մը պիտի ուտէք . ինչու որ
Իսրայէլի որդւոցը խաղաղութեան
զոհերէն քու իրաւունքիդ ու քու
որդւոցդ իրաւունքին համար տրուած
15 են ։ [կ] Բարձրացընելու զիստը ու
երերցընելու երբուծը ճարպին պա-
տարագներովը Տէրոջը առջև երեր-
ցընելու համար պիտի բերեն . և
Տէրոջը պատուիրածին պէս քուկդ
ու քեզի հետ քու որդւոցդ պիտի
ըլլայ յաւիտենական կանոնով ։
16 Եւ Մովսէս [հ] մեղքի պատարագին
նոխազը զգուշութեամբ փնտռեց ,
և ահա այրուած էր . ուստի Ահա-
րոնին մնացած որդիներուն՝ Եղիա-
զարին ու Իթամարին բարկացաւ՝
17 ըսելով . [ձ] Ինչո՞ւ մեղքի պատարագը
սուրբ տեղը չկերաք . քանզի աս ա-
մենասուրբ է , ու Տէրը տուաւ ձե-
զի որ ժողովքին անօրէնութիւնը
վերցընէք՝ ու Տէրոջը առջևը անոնց
18 համար քաւութիւն ընէք ։ Ահա
[ղ] անոր արիւնը սրբարանին մէջը չը-
բերուեցաւ . դուք [ճ] իմ պատուի-
րածիս պէս անպատճառ սուրբ
19 տեղը ուտելու էիք զան ։ Եւ Ահա-
րոն ըսաւ Մովսէսին . Ահա՛ [մ] այսօր
իրենց մեղքի պատարագը ու ողջա-

[ե] Թու. ժզ. 22, 46: Յես. է. 1: իբ. 18, 20: Բ Թագ. իդ. 1:
[զ] Գլ. իա. 12:
[է] Ել. իը. 41: Գլ. ը. 30:
[ը] Եզեկ. խդ. 21: Ղու. ա. 15: Ա Տիմ. գ. 3: Տիտ. ա. 7:
[թ] Գլ. ժա. 47: ի. 25: Երեմ. ժե. 19: Եզեկ. իբ. 26: խդ. 23:
[ժ] Բ Օր. իդ. 8: Նեեմ. ը. 2, 8, 9, 13: Երեմ. ժը. 18: Մաղ. բ. 7:
[ի] Ել. իթ. 2: Գլ. զ. 16: Թու. ժը. 9, 10:
[լ] Գլ. իա. 22:
[խ] Գլ. բ. 3: զ. 16:
[ծ] Ել. իթ. 24, 26, 27: Գլ. է. 31, 34: Թու. ժը. 11:
[կ] Գլ. է. 29, 30, 34:
[հ] Գլ. թ. 3, 15:
[ձ] Գլ. զ. 26, 29:
[ղ] Գլ. զ. 30:
[ճ] Գլ. զ. 26:
[մ] Գլ. թ. 8, 12:

կէզը Տէրոջը առջևը մատուցին ,
ու գլխուս ասանկ բաներ եկաւ . և
թէ որ այսօր մեղքի պատարագը
ուտելու ըլլայի , [յ] Տէրոջը առջևը
20 հաճոյ պիտի ըլլա՞ր արդեօք ։ Եւ
երբ Մովսէս ասիկա լսեց , հաւնեցաւ ։

## ԳԼ. ԺԱ

1 Մաքուր ու անմաքուր չորքոտանիներուն . 9 ձուկերուն , 13 ու թռչուններուն վրայով ։ 29 Անմաքուր սողունները ։

1 Եւ Տէրը խօսեցաւ Մովսէսին ու
2 Ահարոնին՝ ըսելով անոնց . Խօ-
սեցէ՛ք Իսրայէլի որդւոցը՝ ու ըսէ՛ք .
Երկրի վրայ եղած բոլոր անասուն-
ներէն [ն] ձեր ուտելու անասունները
3 ասոնք են . Ամէն բաժնուած կճղակ
ունեցող ու որոճացող անասունը
4 պիտի ուտէք ։ Բայց որոճացողէն
կամ կճղակաբաշխ եղածէն՝ ասոնք
պիտի չուտէք . ուղտը , ինչու՛ որ
անիկայ թէև կ'որոճայ , բայց
կճղակաբաշխ չէ , անիկայ ձեզի
5 անմաքուր ըլլայ ։ Եւ ճագարը , ին-
չու որ անիկայ կ'որոճայ , բայց
կճղակաբաշխ չէ , անիկայ ձեզի
6 անմաքուր ըլլայ ։ Եւ Նապաստակը ,
որ թէև կ'որոճայ , բայց կճղա-
կաբաշխ չէ , անիկայ ձեզի անմա-
7 քուր ըլլայ ։ Եւ խոզը , որ թէև ա-
նիկայ բաժնուած կճղակ ունի ,
բայց չորոճար , [շ] անիկայ ձեզի
8 անմաքուր ըլլայ ։ Ասոնց միսէն պի-
տի չուտէք , ու դիերնուն չդպչիք .
[ո] ձեզի անմաքուր են ։
9 [չ] Ջուրերուն մէջ բոլոր եղածնե-
րէն ասոնք պիտի ուտէք . ջուրերու
մէջ՝ այսինքն ծովերու մէջ և գետե-
րու մէջ ամէն թև ու թեփ ունեցո-
10 ղը պիտի ուտէք ։ Եւ ծովերու մէջ
ու գետերու մէջ եղած բոլոր անթև
ու անթեփ եղածները՝ ջուրերուն
բոլոր զեռուններէն՝ և ջուրերուն
մէջ եղած շունչ ունեցող բոլոր
կենդանիներէն՝ [պ] պիղծ ըլլան ձեզի ։
11 Անոնք ձեզի պիղծ պիտի ըլլան . ա-
նոնց միսէն պիտի չուտէք , և անոնց
12 դիերէն պիտի զզուիք ։ Ջուրերուն
մէջ եղած բոլոր անթև ու անթեփ
եղածները՝ ձեզի պիղծ ըլլան ։
13 [ջ] Եւ թռչուններուն մէջ ասոնք
պիղծ պիտի սեպէք . պիտի չու-
տուին , պիղծ են . արծիւը՝ և պաս-
14 կուճը՝ ու գետարծիւը , Եւ ցինը՝
15 ու անգղը իր տեսակին պէս , Եւ ա-
16 մէն ագռաւը իր տեսակին պէս , Եւ
ջայլամը՝ ու բուն՝ և կկուն՝ ու բա-
17 զէն իր տեսակին պէս , Եւ հաւպա-
տիրը՝ ու հողամաղը՝ և քաջահաւը ,
18 Ու կարապը՝ և հաւալուսը՝ ու սև
19 անգղը , Եւ արագիլը՝ ու քարարդը
իր տեսակին պէս , և յոպոպը՝ ու
չղջիկը ։

Ն. Ք. ԴԻ.
1490

[յ] Երեմ. զ. 20: ժդ. 12: Ովս. թ. 4: Մաղ. ա. 10, 13:
[ն] Բ Օր. ժդ. 4: Գործ. ժ. 12, 14:
[շ] Ես. կե. 4: կզ. 3, 17:
[ո] Ես. ծբ. 11: Մատ. ժե. 11, 20: Մար. է. 2, 15, 18: Գործ. ժ. 14, 15: ժե. 29: Հռով. ժդ. 14, 17: Ա Կոր. ը. 8: Կող. բ. 16, 21: Եբր. թ. 10:
[չ] Բ Օր. ժդ. 9:
[պ] Գլ. է. 18: Բ Օր. ժդ. 3:
[ջ] Բ Օր. ժդ. 12:

Ն · Ք · ԴՔ · 1490

20 Ամէն չորս ոտքի վրայ քալող
թռչող զեռուն ձեզի պիղծ ըլլայ ։
21 Սակայն ասոնք պիտի ուտէք . բո-
լոր չորս ոտքի վրայ քալող թռչող
զեռուններէն՝ երկրի վրայ ցատկելու
համար ոտքերնուն վրայ ազդր ունե-
22 ցողները ։ Անոնցմէ ասոնք պիտի
ուտէք . ե մարախը՝ իր տեսակին
պէս , ու զրուիծը՝ իր տեսակին
պէս , և խարագուլը՝ իր տեսակին
պէս , ու ջորեակը՝ իր տեսակին
23 պէս ։ Բայց ուրիշ բոլոր չորս
ոտքով թռչող զեռունները ձեզի
24 պիղծ ըլլան . Եւ ասոնցմով դուք
անմաքուր պիտի ըլլաք . ամէն ա-
նոնց դիերուն դպչողը՝ մինչև իրի-
25 կուն անմաքուր պիտի ըլլայ ։ Եւ
ամէն անոնց դիերը վերցնողը՝ է իր
հանդերձները պիտի լուայ , ու մին-
չև իրիկուն անմաքուր պիտի ըլլայ ։
26 Բոլոր անասունները՝ որոնք կճղակ
ունին՝ բայց բաժնուած չէ , և չեն
որոճար , անմաքուր են ձեզի . ով որ
անոնց դպչի՝ անմաքուր
պիտի ըլլայ ։
27 Եւ բոլոր չորս ոտքի վրայ քալող
անասուններէն՝ թաթերնուն վրայ
քալողներուն ամէնը անմաքուր ըլ-
լայ ձեզի . ամէն անոնց դիերուն
դպչողը՝ մինչև իրիկուն անմաքուր
28 պիտի ըլլայ ։ Եւ անոնց դիերը
վերցնողը իր լաթերը պիտի լուայ .
ու մինչև իրիկուն ամաքուր պիտի
ըլլայ . անոնք անմաքուր են ձեզի ։
29 Եւ երկրի վրայ սողացող սողուն-
ներուն մէջ՝ ասոնք անմաքուր ըլլան
ձեզի . աքիսը՝ ու Բ մուկը՝ և * տի-
30 տեռը իր տեսակին պէս . Եւ մկնա-
քիսը՝ ու գետնառիւծը՝ և կովա-
դիան՝ ու մողէսը՝ և խլուրդը ։
31 Բոլոր սողացողներուն մէջ ձեզի
անմաքուր եղածները ասոնք են .
ամէն անոնց մեռածին դպչողը՝ մին-
չև իրիկուն անմաքուր պիտի ըլլայ ։
32 Եւ անոնց մեռածը ինչ բանի
վրայ որ իյնայ , թէ փայտէ աման
ըլլայ կամ հանդերձ՝ կամ մորթ՝
կամ քուրձ՝ ինչ տեսակ գործա-
ծական աման որ ըլլայ , անմաքուր
պիտի ըլլայ . ծ ջուրը պիտի ձգուի
ան , ու մինչև իրիկուն անմաքուր
ըլլայ , և ետքը մաքուր սեպուի ։
33 Եւ ասոնց մէկը՝ որ հողէ ամանին
մէջ իյնալու ըլլայ . ամէն անոր մէ-
ջի եղածը անմաքուր պիտի ըլլայ ,
34 ու զան կոտրէք ։ Ա-
մէն ուտուելու կերակուրը՝ որուն
վրայ † ջուր կայ , "
" , անմաքուր պիտի ըլլայ .
նոյնպէս ամէն ամանի մէջ եղած
բոլոր խմուելու խմելիքը անմաքուր
35 պիտի ըլլայ ։ Եւ ամէն բան՝ որուն
վրայ ասոնց դին կ՚իյնայ , անմա-
քուր պիտի ըլլայ . Թէ թոնիր ըլ-
լայ և թէ վառարան՝ պիտի աւ-
րուի . ասոնք անմաքուր են , ու
անմաքուր պիտի սեպուին ձեզի ։
36 Բայց աղբիւրը կամ հորը՝ ‡ "
ժողվուած ջուր կայ" , մաքուր պի-
տի ըլլայ . սակայն անոնց դիերուն
37 դպչողը անմաքուր ըլլայ ։ Եւ թէ
որ անոնց դին՝ ցանուելու սերմի մը
վրայ իյնայ , մաքուր պիտի ըլլայ
38 ան ։ Բայց թէ որ սերմին վրայ
ջուր դրուած ըլլայ ու անոր վրան
անոնց դին իյնայ , ան ձեզի անմա-
քուր պիտի ըլլայ ։
39 Եւ թէ որ ձեր ուտելու կենդա-
նիներէն մէկը մեռնի , անոր դիին
դպչողը՝ մինչև իրիկուն անմաքուր
40 պիտի ըլլայ ։ Եւ Ն անոր դիէն ու-
տողը իր հանդերձները պիտի լուայ ,
ու մինչև իրիկուն անմաքուր պիտի
ըլլայ . և անոր դին վերցնողը իր
հանդերձները պիտի լուայ , ու մին-
չև իրիկուն անմաքուր ըլլայ ։
41 Եւ երկրի վրայ սողացող ամէն
սողունը պիղծ է . պիտի չուտուի
42 ան ։ Երկրի վրայ բոլոր սողացող
սողուններէն ամէն իր փորին վրայ
քալողը՝ կամ ամէն չորս ոտքի վրայ
պտըտողը՝ և կամ ամէն բազմոտանի
եղածները պիտի չուտէք . ինչու որ
43 պիղծ են ։ Ե Բնաւ սողացող սողու-
նով մը անձերնիդ մի՛ պղծէք . ո՛չ
ալ անոնցմով պղծուելով անձեր-
44 նիդ անմաքուր ընէք . Ինչու որ ես
եմ ձեր Տէր Աստուածը . ուստի
սրբեցէ՛ք անձերնիդ՝ ու Ծ սուրբ ե-
ղէք . ինչու որ ես սուրբ եմ . ու
բնաւ երկրի վրայ մէկ սողացող սո-
ղունով մը անձերնիդ մի՛ պղծէք ։
45 Կ Քանզի ես եմ Եհովան՝ որ ձեզ Ե-
գիպտոսի երկրէն հանեցի որ ձեզի
Աստուած ըլլամ . Հ ուստի սուրբ
եղէք , ինչու որ ես սուրբ եմ ։
46 Չորքոտանիներուն՝ և թռչուն-
ներուն՝ ու ջուրերուն մէջ շարժող
բոլոր շնչաւոր կենդանիներուն՝ և
երկրի վրայ սողացող ամէն կենդա-
47 նիներուն օրէնքը աս է . Յ Որ անմա-
քուրին ու մաքուրին մէջտեղը՝ և
ուտուելու անասունին ու չուտուե-
լու անասունին մէջտեղը տարբե-
րութիւն ընէք ։

Ն · Ք · ԴՔ · 1490

ԳԼ · ԺԲ

1 Կնկան մը որդեծնութենէն ետև մաքրուելուն կերպը ։ 6 Իր մաքրուելուն համար մատուցանելու ընծաները ։

1 Եւ Տէրը խօսեցաւ Մովսէսին՝ ը-
2 սելով . Խօսէ՛ Իսրայէլի որդւո-
ցը՝ ու ըսէ . Թէ որ Ա կնիկ մը սերմ
առնէ՝ ու արու զաւակ ծնանելու
ըլլայ , Բ եօթը օր անմաքուր պիտի
ըլլայ . Գ իր դաշտանին համար ղա-

Ե Մատ · Գ · 4 ։ Մար · Ա · 6 ։
Ը Գլ · ԺԴ · 8 ։ ԺԵ · 5 ։ Թուոց · ԺԹ · 10 ։ 22 ։ Լա · 24 ։
Բ Ես · ԿԶ · 17 ։
* Կամ կրիան
Ծ Գլ · ԺԵ · 12 ։
Է Գլ · Զ · 28 ։ ԺԵ · 12 ։
† Կամ՝ ասանկ ջուր գայ ։
‡ Կամ՝ կամ ջրակուտակը՝
Ն Գլ · ԺԷ · 15 ։ Իբ · 8 ։ Բ Օր · ԺԴ · 21 ։ Եզեկ · Դ · 14 ։ ԽԴ · 31 ։
Ե Գլ · Ի · 25 ։
Ծ Եւ · ԺԹ · 6 ։ Գլ · ԺԹ · 2 ։ Ի · 7 · 26 ։ Ա Թես · Դ · 7 ։ Ա Պետ · Ա · 15 , 16 ։
Կ Ել · Զ · 7 ։
Հ Հմր 44 ։
Յ Գլ · Ժ · 10 ։
Ա Գլ · ԺԵ · 19 ։
Բ Ղու · Բ · 22 ։
Գ Գլ · ԺԵ · 19

Ն. ք. գծ. 1490

դ Ծն. ժէ. 12 ; Ղու. ա. 59 ; բ. 21 ; Յոհ. է. 22, 23.

տուելու օրերուն համեմատ անմա-
3 քուր պիտի ըլլայ ։ Եւ դ ութե-
րորդ օրը տղուն անթլփատութեան
4 մարմինը պիտի թլփատուի ։ Եւ
անիկայ իր մաքրուելուն արիւնովը
երեսուներեք օր պիտի նստի . ու
մինչև իր մաքրուելու օրերուն լմըն-
նալը՝ բնաւ սուրբ բանի մը պիտի
չդպչի , ոչ ալ սրբարանը մտնէ ։
5 Բայց թէ որ անիկայ աղջիկ ծնա-
նելու ըլլայ , երկու շաբաթ անմա-
քուր պիտի ըլլայ իր դաշտանին ժա-
մանակին պէս , և վաթսունըվեց օր
իր մաքրուելուն արիւնովը պիտի
նստի ։

ե Ղու. բ. 22.

6 Եւ ե երբ տղայ կամ աղջիկ զաւ-
կի համար իր մաքրուելու օրերը
լմըննայ , ժողովքի խորանին դուռը
ողջակէզի համար մէկ տարեկան
գառն՝ ու մեղքի պատարագի հա-
մար աղաւնիի ձագ մը՝ կամ տատ-
րակ մը պիտի բերէ քահանային ,
7 Որ պիտի մատուցանէ զանիկայ
Տէրոջը առջևը՝ ու քաւութիւն
ընէ անոր համար , և անիկայ իր
արեանը աղբիւրէն պիտի մաքրուի ։
Արու կամ էգ զաւակ ծնանողին

զ Գղ. ե. 7 ; Ղու. բ. 24.

8 օրէնքը աս է ։ զ Եւ թէ որ գառն
բերելու կարող չէ , երկու տատ-
րակ կամ աղաւնիի երկու ձագ
առնէ , մէկը ողջակէզի՝ ու մէկալը

է Գղ. դ. 26.

մեղքի պատարագի համար , է և
քահանան քաւութիւն ընէ անոր
համար , ու անիկայ մաքրուի ։

## ԳԼ. ԺԳ

1—59 Բորոտութեան ախտին վրայով՝ քահա-
նային ծանուցուած կանոնները ու նշանները ։

1 Եւ Տէրը խօսեցաւ Մովսէսին ու
2 Ահարոնին՝ ըսելով . Մարդու
մը մարմնին մորթին մէջ ուռեցք

ա բ Օր. իը. 27.

կամ ա քոս կամ պաղպաջ ըլլալով՝
անոր մարմնին մորթին մէջ բորո-
տութեան ախտին պէս նշան մը ե-
րևնալու ըլլայ , բ ան ատենը անիկայ

բ Բ Օր. ժէ. 8, 9 ; իդ. 8 ; Ղու. ժէ. 14.

Ահարոն քահանային՝ կամ անոր
որդւոցը . քահանաներուն մէկուն
3 պիտի բերուի ։ Եւ քահանան պի-
տի նայի մարմնին մորթին մէջ
եղած ախտին նշաններուն . ու թէ
որ ախտին մէջի մազերը ճերմակի
դառնալով՝ ախտը մարմնին մոր-
թէն խորունկ երևնայ , բորոտու-
թեան ախտ է ան . և քահանան
պիտի նայի անոր՝ ու * պիտի ծա-

* Եբր. զանիկայ անմաքուր պիտի ընէ ։

նուցանէ անոր անմաքուր ըլլալը ։
4 Հապա թէ որ անոր մարմնին մոր-
թին մէջ պաղպաջը ճերմակ է՝ ու
մորթէն խորունկ չերևնար , և
մազն ալ ճերմակի դարձած չէ ,
ան ատենը քահանան եօթը օր
գոցուած պիտի պահէ ախտակիրը ։
5 Եւ քահանան եօթներորդ օրը պի-
տի նայի անոր . ու թէ որ տեսնէ
որ ախտը դեռ կը կենայ , ու ախ-
տը մորթին մէջ տարածուած չէ ,
ան ատեն քահանան եօթը օր ալ
գոցուած պիտի պահէ անիկայ ։
6 Եւ քահանան եօթներորդ օրը նո-
րէն պիտի նայի անոր , ու թէ որ
ախտը շլացած ըլլայ , ու ախտը
մորթին մէջ տարածուած չըլլայ ,

Ն. ք. գծ. 1490

† Եբր. զանիկայ մաքուր պիտի ընէ.

քահանան † պիտի ծանուցանէ ա-
նոր մաքուր ըլլալը . ասիկայ գ քոս
քոս մըն է . և անիկայ դ իր լաթերը

գ Գղ. ժա. 25 ; ժզ. 8.

պիտի լուայ , ու մաքուր ըլլայ ։
7 Բայց թէ որ իր մաքրուելուն հա-
մար քահանայէն նայուելէն ետքը՝
քոսը մորթին մէջ տարածուի ,
քահանան նորէն պիտի նայի անոր ։
8 Եւ քահանային նայած ատենը՝ թէ
որ քոսը մորթին մէջ տարածուած
է , ան ատենը քահանան անոր ան-
մաքուր ըլլալը պիտի ծանուցանէ .
բորոտութիւն է ։
9 Երբոր մարդու մը վրայ բորոտու-
թեան ախտը ըլլայ , անիկայ քա-

դ Թուոց. ժբ. 10, 12 ; դ Թագ. ե. 27 ; բ Մն. իզ. 20.

10 հանային պիտի տարուի . դ Եւ
քահանան պիտի նայի . և թէ որ
մորթին մէջ ճերմակ ուռեցք կայ՝
ու ճերմակի դարձեր է մազը՝ և ու-
ռեցքին մէջը ողջ միսի նշան կայ ,
11 Ասիկայ անոր մարմնին մորթին
մէջ հինցած բորոտութիւն է . և
քահանան անոր անմաքուր ըլլալը
պիտի ծանուցանէ , գոցուած չը-
պահէ զանիկայ . ինչու որ անմա-
քուր է ։
12 Եւ թէ որ բորոտութիւնը մոր-
թին մէջ տարածուեր է , ու ախ-
տաւորին բոլոր մորթը գլխէն մինչև
ոտքը , տեսնելուն՝ քահանային աչ-
քերուն բոլոր տեսած տեղը բորո-
13 տութիւնը պատեր է , Եւ քահա-
նան տեսնէ որ բորոտութիւնը ա-
նոր բոլոր մարմինը պատած է , ան
ատենը ախտաւորին մաքուր ըլլալը
ծանուցանէ . վասն զի բոլորովին ճեր-
մակի դարձաւ , անիկայ մաքուր է ։
14 Բայց երբոր անոր վրայ ողջ միս
տեսնուի , անիկայ անմաքուր պի-
15 տի ըլլայ ։ Եւ քահանան պիտի
տեսնէ ողջ միսը , և անոր անմա-
քուր ըլլալը ծանուցանէ . ողջ մի-
սը անմաքուր է . բորոտութիւն է ։
16 Իսկ թէ որ ողջ միսը փոխուի նորէն՝
ու ճերմակի դառնալու ըլլայ , ան
17 ատենը քահանային պիտի գայ . Եւ
քահանան պիտի տեսնէ զանիկայ .
ու թէ որ ախտը ճերմակի դարձեր
է , ան ատենը քահանան ախտա-
կրին մաքուր ըլլալը ծանուցանէ .
անիկայ մաքուր է ։
18 Եւ թէ որ մարմնին մորթին մէջ

ե Ել. թ. 9.

19 ե պալար ըլլայ՝ ու առողջնայ , Եւ
պալարին տեղը ճերմակ ուռեցք՝

Ն․ Ք․ Ք․
1490

կամ քիչ մը կարմրրած ճերմակ
պաղպաջ ըլլայ, քահանային պիտի
20 ցուցուի ան ։ Եւ երբ քահանան
տեսնէ որ մորթէն ցած կ'երեւնայ,
և մազը ճերմակի դարձած է, քա-
հանան անոր անմաքուր ըլլալը ծա-
նուցանէ․ անիկայ պալարէ ելած
21 բորոտութեան ախտ է ։ Եւ թէ
որ քահանան տեսնէ որ ճերմակ
մազ չկայ անոր մէջ, ու մորթէն
ցած չէ՝ բայց շլացած է, ան առե-
նը քահանան եօթը օր գոցուած
22 պիտի պահէ զանիկայ ։ Եւ թէ որ
մորթին մէջ տարածուած է, ան
ատենը քահանան անոր անմաքուր
ըլլալը ծանուցանէ․ ախտ է ան ։
23 Բայց թէ որ պաղպաջը իր տեղը կը
կենայ՝ ու չէ տարածուեր, պալա-
րին սպին է․ և քահանան անոր
մաքուր ըլլալը պիտի ծանուցանէ ։
24 Իսկ թէ որ մարմնին մորթին
մէջ կրակի այրած ըլլայ, ու *այ-
րածին նշանը" քիչ մը կարմրրած
ճերմակ՝ կամ բոլորովին ճերմակ
25 պաղպաջ ըլլայ, Քահանան անոր
նայած ատենը, թէ որ պաղպաջին
մէջ մազը ճերմակի դարձած է, ու
մորթէն խորունկ կ'երեւնայ, անի-
կայ այրածէն յառաջ եկած բորո-
տութիւն է․ և քահանան անոր
անմաքուր ըլլալը ծանուցանէ․ ա-
նիկայ բորոտութեան ախտ է ։
26 Բայց թէ որ քահանային նայած
ատենը՝ պաղպաջին մէջ մազը ճեր-
մակ չէ, ու մորթէն խորունկ չէ,
հապա շլացած է, ան ատենը քա-
հանան եօթը օր գոցուած պիտի
27 պահէ անիկայ ։ Եւ եօթներորդ
օրը քահանան պիտի նայի անոր․
թէ որ մորթին մէջ տարածուած
է, քահանան անոր անմաքուր ըլ-
լալը ծանուցանէ․ անիկայ բորո-
28 տութեան ախտ է ։ Եւ թէ որ
պաղպաջը իր տեղը կը կենայ՝ ու
մորթին մէջ տարածուած չէ, հա-
պա շլացած է, անիկայ այրածին
ուռեցքն է․ և քահանան անոր
մաքուր ըլլալը ծանուցանէ․ ինչու
որ այրածին սպին է ։

29 Եւ թէ որ մարդու մը կամ կըն-
կան մը գլուխը կամ մօրուքը ախտ
30 մը ըլլայ, Քահանան պիտի տեսնէ
ախտը․ և թէ որ մորթէն խորունկ
երեւնայ, ու անոր մէջը բարակ դե-
ղին մազ ըլլայ, ան ատենը քահա-
նան անոր անմաքուր ըլլալը պիտի
ծանուցանէ․ անիկայ գոնջութիւն
է, գլուխի կամ մօրուքի բորոտու-
31 թիւն է ։ Եւ թէ որ քահանան
գոնջութեան ախտը տեսնէ՝ որ
մորթէն խորունկ չերեւնար, ու ա-
նոր մէջը սեւ մազ չկայ, ան ատենը
քահանան գոնջութեամբ ախտա-
ցածը եօթը օր գոցուած պիտի պա-
32 հէ ։ Եւ եօթներորդ օրը քահանան
ախտակրին պիտի նայի, ու թէ որ
գոնջութիւնը տարածուած չէ, և
անոր մէջ դեղին մազ չկայ, ու
գոնջութիւնը մորթէն խորունկ չե-
33 րեւնար, Անիկայ պիտի ածիլուի,
բայց գոնջութիւնը պիտի չածիլէ․
և քահանան եօթը օր ալ գոցուած
պիտի պահէ գոնջութիւն ունեցո-
34 ղը ։ Եւ եօթներորդ օրը քահանան
գոնջութիւն ունեցողին պիտի նա-
յի․ և թէ որ գոնջութիւնը մոր-
թին մէջ տարածուած չէ, ու մոր-
թէն խորունկ չերեւնար, ան ատենը
քահանան անոր մաքուր ըլլալը
ծանուցանէ․ և անիկայ իր լաթերը
պիտի լուայ, ու մաքուր ըլլայ ։
35 Բայց թէ որ իր մաքրուելէն ետքը
գոնջութիւնը մորթին մէջ տարա-
36 ծուի, Ան ատենը քահանան պիտի
նայի անոր․ և թէ որ գոնջութիւնը
մորթին մէջ տարածուած է, ան
ատենը քահանան՝ ու դեղին մազ
պիտի չփնտռէ․ անիկայ անմաքուր
37 է ։ Բայց թէ որ քահանան տեսնէ
որ գոնջութիւնը կը կենայ, և անոր
մէջ սեւ մազ բուսեր է, գոնջու-
թիւնը բժշկուած է․ անիկայ մա-
քուր է, ու քահանան անոր մաքուր
ըլլալը ծանուցանէ ։

38 Եւ թէ որ մարդ մը կամ կնիկ
մը՝ իր մարմնին մորթին մէջ պաղ-
պաջներ՝ այսինքն ճերմակ պաղպաջ-
39 ներ ունենայ, Ան ատենը քահանան
պիտի նայի, և թէ որ անոնց մար-
միններուն մորթին մէջի պաղպաջ-
ները շլացած ճերմակ ըլլան, անի-
կայ մորթին մէջ գոյացած պիսակ
է․ անիկայ մաքուր է ։

40 Եւ թէ որ մարդու մը գլխուն
մազը թափելու ըլլայ, անիկայ կըն-
41 տակ է՝ բայց մաքուր է ։ Եւ թէ որ
անոր երեսին կողմէն գլխուն մազերը
ինկած ըլլայ, անիկայ ճեղ է՝ բայց
42 մաքուր է ։ Հապա թէ որ կնտու-
թեան կամ ճեղութեան մէջ քիչ
մը կարմրրած ճերմակ վէրք մը ըլ-
լայ, ան՝ անոր կնտութեանը կամ
ճեղութեանը մէջ գոյացած բորո-
43 տութիւն է ։ Ան ատենը քահանան
պիտի նայի անոր․ և թէ որ անոր
կնտութեանը կամ ճեղութեանը
մէջ վէրքին ուռեցքը քիչ մը
կարմրրած ճերմակ ըլլայ՝ մարմնին
մորթին մէջ եղած բորոտութեան
44 երեւոյթին պէս, Ան մարդը բորոտ
է, անմաքուր է․ քահանան ան-
պատճառ անոր անմաքուր ըլլալը
պիտի ծանուցանէ․ անոր ախտը իր
գլուխն է ։

45 Եւ ախտ ունեցող բորոտին հան-
դերձը պատռած պիտի ըլլայ, և ա-

Ն․ Ք․ Ք․
1490

* Կամ՝ այրածը առողջանալով

Նչ. Ք. ՂԲ.
1490

ղԵզեկ. ԻԴ. 17. 22. Միք. Գ. 7.
*Կամ՝ ընչացքը.
ԽՈզբ. Գ. 15.
ըԹու. Ե. 2. ԺԲ. 14.
դԹագ. Է. 3. ԺԵ. 5.
բՄն. ԻԴ. 21. Ղու. ԺԷ. 12.
ԻԳլ. ԺԴ. 44.

նոր գլուխը մերկ, ու ղանոր *շըր-
թունքները ծածկուած պիտի ըլ-
լայ, և ձայն պիտի տայ թէ՝ ԽԱն-
46 մաքուր եմ՝ անմաքուր։ Ախտը իր
վրան եղած բոլոր օրերը անմաքուր
պիտի սեպուի. անիկայ անմաքուր
է, մինակ պիտի նստի. ըանոր
բնակութիւնը բանակէն դուրս պի-
տի ըլլայ։
47 Եւ այն հանդերձը՝ որուն մէջը
բորոտութեան ախտ կայ, թէ
բուրդէ հանդերձ ըլլայ՝ և թէ
48 քթանէ հանդերձ, քթանեղէնի
կամ բրդեղէնի առէջի կամ թե-
զանի մէջ՝ կամ մորթի մէջ և կամ
մորթէ շինուած ամէն բանի մէջ,
49 Այնպէս թէ որ հանդերձի կամ
մորթի մէջ՝ կամ առէջի կամ թե-
զանի մէջ՝ կամ մորթէ շինուած ա-
մէն կերպ բանի մէջ քիչ մը կանանչ
կամ կարմրրած նշան ըլլայ, բորո-
տութեան ախտ է, ու քահանային
50 պիտի ցուցուի։ Եւ քահանան պի-
տի նայի ախտին՝ ու եօթը օր գո-
ցուած պիտի պահէ պլըշկած բանը։
51 Եւ եօթներորդ օրը պլըշկած բանին
պիտի նայի. թէ որ ախտին նշանը
տարածուած է հանդերձի մը մէջ՝
կամ առէջի կամ թեզանի մէջ՝ կամ
մորթի մէջ և կամ գործածուե-
լու համար մորթէ շինուած ամէն
բանի մէջ, աս ախտը Իբորբոքած
բորոտութիւն է, անմաքուր է։
52 Ուստի անիկայ պիտի այրէ բրդե-
ղէն կամ քթանեղէն հանդերձը՝
կամ առէջը կամ թեզանը, կամ
ամէն կերպ մորթէ շինուած բանը՝
որուն մէջ այն ախտը կայ. ինչու
որ բորբոքած բորոտութիւն է այն,
53 կրակի մէջ պիտի այրուի։ Եւ
թէ որ քահանան տեսնէ որ ախ-
տին նշանը հանդերձին մէջ՝
կամ առէջին կամ թեզանին մէջ՝
կամ ամէն կերպ մորթէ շինուած
54 բանին մէջ տարածուած չէ, Այն ա-
տենը քահանան պիտի հրամայէ որ
այն պլըշկուած բանը լուան. ու
քահանան նորէն եօթը օր գոցուած
55 պիտի պահէ զայն։ Եւ պլըշկուած
բանը լուացուելէն ետքը՝ թէ որ
քահանան տեսնէ որ ախտի նշանը
իր գոյնը չէ փոխեր, ու ախտը տա-
րածուած ալ չէ, անիկայ անմա-
քուր է. կրակի մէջ պիտի այրես
զայն. անոր տակը կամ վրան փտու-
56 թիւն կայ։ Եւ թէ որ քահանան
տեսնէ որ անոր լուացուելէն ետքը՝
ախտին նշանը շլացած է, այն ա-
տենը այն պլըշկուած մասը՝ հանդեր-
ձէն կամ մորթէն՝ կամ առէջէն և
57 կամ թեզանէն պիտի պատռէ։ Եւ
թէ որ այն հանդերձին մէջ՝ կամ
առէջին կամ թեզանին մէջ՝ կամ
ամէն կերպ մորթէ շինուած բանին
մէջ նորէն երեւնալու ըլլայ, անի-
կայ տարածուած բորբոքած է.
ախտին նշանը վրան ունեցող բանը
58 կրակի մէջ պիտի այրես։ Եւ այն
հանդերձը՝ կամ առէջը կամ թե-
զանը՝ կամ ամէն կերպ մորթէ շի-
նուած բանը՝ որ լուացուելէն ետքը
ախտը անկէ գացած է, նորէն պի-
տի լուացուի, ու մաքուր ըլլայ։
59 Բուրդէ կամ քթանէ հանդերձի
մէջ՝ կամ առէջի կամ թեզանի
մէջ՝ կամ մորթէ շինուած ամէն կերպ
բանի մէջ երեւցած բորոտութեան
ախտին օրէնքը աս է, անոր մա-
քուր կամ անմաքուր ըլլալը ծանու-
ցանելու համար։

## ԳԼ. ԺԴ

1 Բորոտի մը մաքրուելուն արարողութիւնները ու զոհերը։ 33 Տան մը մէջ երեւցած բորոտութեան նշանները։ 48 Ասանկ տունը մաքրելուն կերպը։

Ն. Ք. ՂԲ.
1490

աՄատ. Ը. 2. 4. Մար. Ա. 40. 44. Ղու. Ե. 12. 14. ԺԷ. 14.
բԹու. ԺԹ. 6.
գԵբր. Թ. 19.
դՍաղ. ԾԱ. 7.
եԴթագ. Ե. 10. 14.
զԵբր. Թ. 13.
էԳլ. ԺԳ. 6.
ըԳլ. ԺԱ. 25.
ԻԹու. ԺԲ. 15.
ծՄատ. Ը. 4. Մար. Ա. 44. Ղու. Ե. 14.
էԳլ. Բ. 1. Թու. ԺԵ. 4. 15.

1 Եւ Տէրը խօսեցաւ Մովսէսին՝ ը-
2 սելով. Բորոտին օրէնքը աս է
իր մաքրուելու օրը. անիկայ աքա-
3 հանային պիտի տարուի. Եւ քա-
հանան բանակէն դուրս պիտի ելլէ,
ու քահանան պիտի նայի. ու թէ
որ բորոտին բորոտութեան ախտը
4 բժշկուած է, Այն ատենը քահանան
պիտի հրամայէ՝ որ մաքրուելու
մարդուն համար երկու ողջ և մա-
քուր թռչուն՝ ու բեղեւնափայտ՝
ու գկրկնակի կարմիր և դզոպայ
5 առնուի։ Եւ քահանան պիտի հը-
րամայէ՝ որ թռչուններին մէկը հողէ
ամանի մը մէջ կենդանի ջուրի վրայ
6 մորթուի։ Եւ ողջ թռչունը՝ ու
եղեւնափայտը՝ և կրկնակի կարմիրը
ու զոպան պիտի առնէ, և ասոնք
ողջ թռչունին հետ կենդանի ջու-
րին վրայ մորթուած թռչունին
7 արեանը մէջ պիտի թաթխէ. Եւ
բորոտութենէն մաքրուելու մար-
դուն վրայ եեօթը անգամ սրսկէ.
ու մաքրէ անիկայ. և ողջ թռչու-
8 նը դէպ ՚ի դաշտը արձակէ։ Եւ
մաքրուելու մարդը զիր հանդերձ-
ները պիտի լուայ, ու իր բոլոր
մազերը ածիլէ, ըև ջրով պիտի
լուացուի, ու մաքրուի. և անկէ
ետև բանակը պիտի մտնէ, ու եօ-
թը օր Իիր վրանին դուրսի դին
9 պիտի կենայ։ Եւ եօթներորդ օրը
իր բոլոր մազերը ածիլէ, իր գլու-
խը ու մօրուքը և յօնքերը՝ այսինքն
իր բոլոր մազերը ածիլէ. և իր լա-
թերը պիտի լուայ, ու իր մարմինը
ջրով լուայ, ու մաքուր ըլլայ։
10 Եւ ութերորդ օրը ծերկու անա-
րատ արու գառն՝ ու մէկ տարեկան
մէկ անարատ էգ գառն՝ և էհացի

Ն · Ք · ՂՖ ·
1490

ընծայի համար եղով շաղուած խիլք
տասանորդ բարակ ալիւր՝ ու մէկ
11 ճաշակ եղ պիտի առնէ ։ Եւ մաք-
րող քահանան՝ մաքրուելու մարդը
առնցմով Տէրոջը առջեւ ժողովքի
խորանին դուռը պիտի կայնեցընէ ։
12 Եւ քահանան արու գառին մէկը
ըՂԻ · Ե · 2, 18 ։ Զ · 6, 7 ։ պիտի առնէ՝ ու ըմօտեցընէ յան-
ցանքի պատարագի համար . ու ե-
ղին ճաշակը գէթէ առնէ, և զանոնք
ԽԵՒ · ԽԹ · 24 ։ Տէրոջը առջեւ ԽԵրերցընելու ընծայ
13 պիտի ընէ ։ Եւ գառը պիտի մոր-
ԾԵՒ · ԽԹ · 11 ։ ԳՂ · Ա · 5, 11 ։ Գ · 4, 24 ։ թէ ծմեղքի պատարագին ու ողջա-
կէզին մորթուած տեղը, սուրբ տե-
ղը գէթէ մորթէ . ինչու որ յանցանքի
ԿԳՂ · Է · 7 ։ պատարագը՝ կմեղքի պատարագին
ՀԳՂ · Բ · 3 ։ Է · 6 ։ ԽԱ · 22 ։ պէս քահանայինն է . Հասիկայ ա-
14 մենասուրբ է ։ Եւ քահանան յան-
ցանքի պատարագին արիւնէն պի-
տի առնէ, ու քահանան մաքրուե-
ՅԵՒ · ԽԹ · 20 ։ ԳՂ · Ը · 23 ։ լու մարդուն յաջ ականջին բըլ-
թակին վրայ՝ և անոր աջ ձեռքին
մեծ մատին վրայ՝ ու անոր աջ ոտ-
քին մեծ մատին վրայ պիտի դնէ
15 զան ։ Եւ քահանան եղին ճաշակէն
քիչ մը եղ պիտի առնէ, ու իր ձախ
16 ձեռքին մէջը թափէ ։ Եւ քա-
հանան աջ մատը իր ձախ ձեռ-
քին մէջը եղած եղին պիտի թաթ-
խէ, ու իր մատովը Տէրոջը առ-
ջեւը եօթը անգամ սրսկէ ան ե-
17 ղէն ։ Եւ քահանան իր ձեռքին
մէջը մնացած եղէն մաքրուելու
մարդուն աջ ականջին բլթակին
վրայ՝ ու անոր աջ ձեռքին մեծ
մատին վրայ՝ և անոր աջ ոտքին
մեծ մատին վրայ՝ յանցանքի պա-
տարագի արիւնին վրան պիտի
18 դնէ ։ Եւ քահանան իր ձեռքին
մէջ մնացած եղը մաքրուելու մար-
ՂԳՂ · Գ · 26 ։ դուն գլխուն վրայ պիտի դնէ, Ղու
քահանան անոր համար քաւու-
թիւն պիտի ընէ Տէրոջը առջեւ ։
ՑԳՂ · Ե · 1, 6 ։ ԺԲ · 7 ։ 19 Ետքը քահանան Ցմեղքի պատա-
րագը պիտի մատուցանէ, և իր
անմաքրութենէն մաքրուելու մար-
դուն համար քաւութիւն ընէ, ու
20 անկէ ետեւ ողջակէզը մորթէ ։ Եւ
քահանան ողջակէզը ու հացի ըն-
ծան սեղանին վրայ պիտի մատու-
ցանէ, ու անոր համար քաւու-
թիւն ընէ, և անիկայ պիտի մաք-
րուի ։
ՓԳՂ · Ե · 7 ։ ԺԲ · 8 ։ 21 Եւ Փթէ որ անիկայ աղքատ ըլ-
լայ, ու այնչափին իր կարողու-
թիւնը չհասնի, ան առնէ անոր
քաւութիւն ընելու համար երեր-
ցընելու յանցանքի պատարագի
գառնուկ մը՝ և հացի ընծայի հա-
մար եղով շաղուած տասանորդ մը
բարակ ալիւր ու ճաշակ մը եղ պի-
ՔԳՂ · ԺԲ · 8 ։ ԺԵ · 14, 15 ։ 22 տի առնէ . ՔԵւ երկու տատրակ՝
կամ աղաւնիի երկու ձագ որը՝ որ
գտնէ . և մէկը մեղքի պատարագ՝
23 ու մէկալը ողջակէզ ըլլայ ։ ՆԵւ
ութերորդ օրը իր մաքրուելուն ՆՀմր 11 ։
համար զանոնք քահանային պիտի
բերէ ժողովքի խորանին դուռը
24 Տէրոջը առջեւ ։ ՆԵւ քահանան ՆՀմր 12 ։
պիտի առնէ յանցանքի պատարա-
գին գառնուկը ու եղին ճաշակը,
և զանոնք Տէրոջը առջեւ երեր-
25 ցընելու ընծայ մատուցանէ ։ Եւ
յանցանքի պատարագին գառնուկը
պիտի մորթէ, Մու քահանան յան- ՄՀմր 14 ։
ցանքի պատարագին արիւնէն պի-
տի առնէ, ու մաքրուելու մար-
դուն աջ ականջին բլթակին վրայ՝
և անոր աջ ձեռքին մեծ մատին
վրայ՝ ու անոր աջ ոտքին մեծ մա-
26 տին վրայ դնէ ան ։ Եւ քահանան
եղէն իր ձախ ձեռքին մէջը պիտի
27 թափէ ։ Եւ քահանան իր աջ
մատովը իր ձախ ձեռքին մէջ եղած
եղէն Տէրոջը առջեւ եօթը անգամ
28 պիտի սրսկէ ։ Եւ քահանան իր
ձեռքին մէջ եղած եղէն մաքրուե-
լու մարդուն աջ ականջին բլթա-
կին վրայ՝ ու անոր աջ ձեռքին մեծ
մատին վրայ՝ և անոր աջ ոտքին
մեծ մատին վրայ՝ յանցանքի պա-
տարագին արիւնը եղած տեղին
29 վրայ պիտի դնէ ։ Եւ քահանան
իր ձեռքին մէջ մնացած եղը մաք-
րուելու մարդուն գլխուն վրայ պի-
տի դնէ՝ Տէրոջը առջեւ անոր հա-
30 մար քաւութիւն ընելով ։ Եւ
Շտատրակներէն կամ աղաւնիի ՇՀմր 22 ։ ԳՂ · ԺԵ · 15 ։
31 ձագերէն մէկը՝ որը որ գտնէ, Այ-
ինքն որուն որ իր ձեռքը հասնի,
մէկը մեղքի պատարագի համար՝ և
մէկալը ողջակէզի համար՝ հացի
ընծային հետ մէկտեղ պիտի մա-
տուցանէ . և քահանան մաքրուե-
լու մարդուն համար քաւութիւն
32 ընէ Տէրոջը առջեւ ։ Բորոտու-
թեան ախտ ունեցողին՝ ու Պիր ՊՀմր 10 ։
մաքրուելուն համար պէտք եղած
պատարագները հասցնելու կարո-
ղութիւն չունեցողին օրէնքը աս
է ։

33 Եւ Տէրը խօսեցաւ Մովսէսին ու
34 Ահարոնին՝ ըսելով . ՋԵրբոր մտնէք ՋԾն · ԺԷ · 8 ։ ԹՈՒ · ԼԲ · 22 ։ Բ Օր · Է · Ք ։ ԼԲ · 49 ։
Քանանու երկիրը՝ որ ձեզի ստա-
ցուածք ըլլալու պիտի տամ . և ձեր
ստացուածքը եղած երկրին մէկ տա-
նը մէջ բորոտութեան հարուածը
35 տալու ըլլամ, Ան տանը տէրը պի-
տի գայ, ու իմացընէ քահանային՝
ըսելով . Ինծի կ'երեւնայ որ Ռտանս ՌԱռակ · Գ · 33 ։ Զաք · Ե · 4 ։
36 մէջը ախտ կայ ։ Եւ քահանան պի-
տի հրամայէ որ տունը պարպեն,
դեռ ինքը տեսնելու չգացած, որ-
պէս զի տանը մէջ եղած բաներէն
մէկը անմաքուր չըլլայ . ու անկէ
ետեւ քահանան տունը տեսնելու

Ն․ Ք․ ԴՓ․
1490

37 պիտի երթայ ․ Եւ ախտին նշաններուն պիտի նայի , ու թէ որ պղըշ-
կած տանը պատերուն վրայ քիչ մը կանանչցած կամ կարմրած փոս տե-
ղուանք կայ , ու անոնք պատին երե-
38 սէն խորունկ կ'երեւնան , Ան ատենը քահանան տունէն պիտի ելլէ տանը
դուռը ․ և եօթը օր տունը պիտի
39 գոցէ ։ Ու եօթներորդ օրը քահա-
նան նորէն պիտի գայ ու նայի ․ և
թէ որ ախտը տանը պատերուն
40 վրայ տարածուած է , Ան ատենը
քահանան պիտի հրամայէ՝ որ
պղըշկած քարերը հանեն , և քաղա-
քէն դուրս անմաքուր տեղ մը նե-
41 տեն զանոնք ։ Եւ տունը ներսէն
շուրջանակի քերել պիտի տայ , ու
անոնց քերած հողը՝ քաղաքին
դուրսի դին անմաքուր տեղ մը
42 պիտի թափեն ։ Եւ ուրիշ քարեր
պիտի առնեն՝ ու ան քարերուն
տեղը պիտի դնեն , և ուրիշ հող
պիտի առնեն , ու տունը ծեփեն ։
43 Եւ թէ որ քարերը հանելէն ետքը՝
ու տունը քերելէն և ծեփելէն ետ-
քը՝ ախտը նորէն գայ՝ ու տանը
44 մէջ երեւան ելլէ , Ան ատենը քա-
հանան պիտի գայ ու նայի ․ և թէ
որ ախտը տանը մէջ տարածուած
է , տանը մէջ բորբոքած բորո-
տութիւն կայ ․ անմաքուր է ան ։
45 Եւ տունը՝ այսինքն անոր քարերը ու
փայտերը՝ ու տանը բոլոր ծեփուած
հողը փլցնէ , և քաղաքին դուրսի
46 դին անմաքուր տեղ մը հանէ ։ Եւ
ով որ ան տունը մտնէ անոր բոլոր
գոցուած օրերը , մինչև իրիկուն
47 անմաքուր պիտի ըլլայ ։ Եւ ան
տունը պառկողը՝ իր հանդերձները
պիտի լուայ ․ ու ան տանը մէջ հաց
ուտողը՝ իր հանդերձները պիտի
48 լուայ ։ Եւ թէ որ քահանան գայ՝
ու նայի որ տունը ծեփուելէն ետ-
քը՝ ախտը տանը մէջ տարածուած
չէ , ան ատենը քահանան ան տանը
մաքուր ըլլալը ծանուցանէ ․ վասն զի
49 որ ախտը բժշկուած է ։ Եւ տա-
նը մաքրութեանը համար՝ երկու
թռչուն՝ ու եղեւնափայտ՝ և կրկնա-
կի կարմիր ու զոպայ պիտի առնէ ։
50 Եւ պիտի մորթէ թռչուններին մէկը
հողէ ամանի մը մէջ՝ կենդանի ջուրի
51 վրայ ։ Եւ եղեւնափայտը՝ ու զո-
պան՝ և կրկնակի կարմիրը ու ողջ
թռչունը պիտի առնէ , ու զանոնք
մորթուած թռչունին արեանը և
ան կենդանի ջուրին մէջ պիտի
թաթխէ , ու եօթը անգամ տանը
52 վրայ սրսկէ ․ Եւ թռչունին արիւ-
նովը ու ան կենդանի ջրով և ան
ողջ թռչունով ու եղեւնափայտով
և զոպայով ու կրկնակի կարմիրով
53 պիտի մաքրէ տունը ․ Եւ ողջ
թռչունը քաղաքին դուրսի դին
դէպ 'ի դաշտը պիտի արձակէ , ու
տանը համար քաւութիւն ընէ , և
պիտի մաքրուի ան ։
54 Բոլոր բորոտութեան ախտին ու
55 ր ղոնջութեան , Եւ ց հանդերձի
56 կամ տան մը բորոտութեան , Եւ
ուռեցքի ու քոսի և պաղպաջի
57 օրէնքը աս է ։ Մէկ բան մը որ ա-
տեն անմաքուր ըլլալը՝ ու որ ա-
տեն անոր մաքրուիլը՝ սորվեցը-
նելու համար՝ բորոտութեան օ-
րէնքը աս է ։

Գլ․ ԺԳ․ 51 ։ Զաք․ Ե․ 4 ։

Հռմ 4 ։

Ն․ Ք․ ԴՓ․
1490

Հռմ 20 ։ Գլ․ ԺԳ․ 30 ։ Գլ․ ԺԳ․ 47 ։ Հռմ 34 ։ Գլ․ ԺԳ․ 2 ։ Կամ՝ Մէկ բան մը երբոր անմաքուր է ու երբոր մաքուր է՝ ինչ ըլլալը ։ Օր․ ԻԴ․ 8 ։ Եզեկ․ ԽԴ․ 23 ։

## ԳԼ․ ԺԵ

1 Մարդոց անմաքրութիւնը՝ իրենց ծորումին ժամանակը ։ 13 Անոնց մաքրուիլը ։ 19 Կնիկներուն անմաքրութիւնը՝ իրենց ծորումին ժամանակը ։ 28 Անոնց մաքրուիլը ։

1 Եւ Տէրը խօսեցաւ Մովսէսին ու
2 Ահարոնին՝ ըսելով ․ Խօսեցէք
Իսրայէլի որդւոցը՝ ու ըսէք անոնց ․
Երբոր մարդու մը մարմինէն ծո-
րում ըլլայ , անոր ծորումը անմա-
3 քուր է ։ Եւ իր ծորումին ժամա-
նակը իր անմաքրութիւնը աս պի-
տի ըլլայ ․ Թէ որ իր մարմինէն իր
ծորումը վազէ , կամ իր մարմինը
իր ծորմանէն գոցուի , աս է իր
4 անմաքրութիւնը ։ Ամէն անկողին՝
որուն վրայ ծորում ունեցողը կը
պառկի , անմաքուր է ․ և ամէն
բան՝ որուն վրայ անիկայ նստի ,
5 անմաքուր պիտի ըլլայ ։ Եւ անոր
անկողինին դպչող մարդը՝ իր հան-
դերձները պիտի լուայ , ու ինքը
ջրով լուացուի , ու մինչև իրիկուն
6 անմաքուր ըլլայ ։ Եւ ծորում ու-
նեցողին նստած բանին վրայ նստո-
ղը՝ իր հանդերձները պիտի լուայ ,
ու ինքը ջրով լուացուի , և մինչև
7 իրիկուն անմաքուր ըլլայ ։ Եւ ծո-
րում ունեցողին մարմինին դպչողը՝
իր հանդերձները պիտի լուայ , ու
ինքը ջրով լուացուի , և մինչև իրի-
8 կուն անմաքուր ըլլայ ։ Եւ ծո-
րում ունեցողը մաքուր մարդու մը
վրայ թքնելու ըլլայ , անիկայ իր
հանդերձները պիտի լուայ , ու ին-
քը ջրով լուացուի , և մինչև իրի-
9 կուն անմաքուր ըլլայ ։ Եւ ամէն
թամբ՝ որուն վրայ ծորում ունե-
ցողը կը հեծնէ , անմաքուր պիտի
10 ըլլայ ։ Եւ ամէն անոր տակը եղած
բանին դպչողը՝ մինչև իրիկուն ան-
մաքուր պիտի ըլլայ ․ ու զանոնք
վերցնողը՝ իր հանդերձները պիտի
լուայ , և ինքը ջրով լուացուի , ու
մինչև իրկուն անմաքուր ըլլայ ։
11 Եւ ծորում ունեցողը՝ իր ձեռքը
ջուրը չխօթած՝ որուն որ դպչելու
ըլլայ , անիկայ իր հանդերձները
պիտի լուայ , ու ինքը ջրով լուա-

Գլ․ ԻԲ․ 4 ։ Թուոց Ե․ 2 ։ Բ Թագ․ Գ․ 29 ։ Մատ․ Թ․ 20 ։ Մար․ Ե․ 25 ։ Ղուկ․ Ը․ 43 ։

Գլ․ ԺԱ․ 25 ։ ԺԷ․ 15 ։

Ն. Ք. Դ. 1490

գ Ղւ. զ. 28; ժա. 32, 33; դ Հմր 28; Ղւ. ժդ. 8; ե Ղւ. ժդ. 22, 23; Ղւ. ժդ. 30, 31; Ղւ. ժդ. 19, 31; զ Ղւ. իբ. 4; բ Օր. իգ. 10; ը Ա Թագ. իա. 4; թ Ղւ. ժբ. 2; ի Տե՛ս Ղւ. ի. 18; լ Մատ. թ. 20; Մար. ե. 25; Ղուկ. ը. 43;

ցուի, և մինչև իրիկուն անմաքուր
12 ըլլայ ։ Եւ ծորում ունեցողին
դպած գ հողէ ամանը պիտի կոտ–
րուի, ու ամէն փայտէ աման՝ ջու–
րը պիտի խօթուի ։
13 Եւ երբ ծորում ունեցողը իր ծո–
րումէն մաքրուի, դ իր մաքրուելուն
համար եօթը օր պիտի համրէ ի–
րեն, և իր հանդերձները լուայ, ու
իր մարմինը կենդանի ջուրի մէջ
14 լուայ, և մաքուր պիտի ըլլայ. Եւ
ութերորդ օրը ե երկու տատրակ
կամ աղաւնիի երկու ձագ պիտի
առնէ իրեն, ու Տէրոջը առջևը
ժողովքի խորանին դուռը գայ, և
15 անոնք քահանային տայ ։ Եւ քա–
հանան զանոնց մէկը մեղքի պա–
տարագ՝ ու մէկալը ողջակէզ պի–
տի ընէ, ե և քահանան Տէրոջը
առջևը քաւութիւն ընէ անոր՝ իր
ծորումին համար ։
16 Եւ թէ որ զ մարդու մը զուգա–
ւորութեան սերմը իրմէն ելլելու
ըլլայ, իր բոլոր մարմինը ջրով պի–
տի լուայ, ու մինչև իրիկուն ան–
17 մաքուր ըլլայ ։ Եւ ամէն հանդերձ
ու ամէն մորթ՝ որուն վրայ զուգա–
ւորութեան սերմ կայ, ջրով պի–
տի լուացուի, ու մինչև իրիկուն
18 անմաքուր ըլլայ ։ Եւ երբոր մարդ
մը կնկանը հետ զուգաւորելու հա–
մար պառկի, անոնք երկուքն ալ
ջրով պիտի լուացուին, ու ը մինչև
իրիկուն անմաքուր ըլլան ։
19 Եւ թ թէ որ կնիկ մը ծորում ու–
նենայ՝ ու անոր մարմնոյն ծորումը
արիւն է, եօթը օր զատուած պի–
տի կենայ. և ամէն անոր դպչողը
մինչև իրիկուն անմաքուր ըլլայ ։
20 Եւ անոր զատուած ատենը ինչ
բանի վրայ որ պառկի, այն բանը
անմաքուր պիտի ըլլայ, և ինչ բա–
նի վրայ որ նստի, այն բանը անմա–
21 քուր պիտի ըլլայ ։ Եւ ամէն ա–
նոր անկողինին դպչողը՝ իր հան–
դերձները պիտի լուայ, ու ինքը
ջրով լուացուի, և մինչև իրիկուն
22 անմաքուր ըլլայ ։ Եւ ով որ դպչի
բանի մը՝ որուն վրայ անիկայ
նստաւ, իր հանդերձները պիտի
լուայ, ու ինքը ջրով լուացուի, և
23 մինչև իրիկուն ամաքուր ըլլայ ։ Եւ
անոր անկողինին դպչողը՝ կամ մէկ
բանի մը՝ որուն վրայ անիկայ կը
նստի, մինչև իրիկուն անմաքուր
24 պիտի ըլլայ ։ Եւ ի թէ որ մարդ մը
անոր հետ պառկի, անանկ որ անոր
պղծութիւնը իրեն դպչի, այն մարդը
եօթը օր անմաքուր պիտի ըլլայ, և
ամէն անկողին որուն վրայ անիկայ
պառկի՝ անմաքուր ըլլայ ։
25 Եւ լ կնիկ մը՝ թէ որ դաշտանին
ատենը չեկած, իր արիւնին ծորու–
մը շատ օրեր վազէ կամ իր դաշ–
տանէն աւելի վազելու ըլլայ, իր
անմաքրութեանը ծորումին բոլոր
օրերը՝ իր դաշտանին օրերուն պէս
պիտի ըլլայ. անիկայ անմաքուր է ։
26 Անոր ծորումին բոլոր օրերը՝ ամէն
անկողին որուն վրայ անիկայ կը
պառկի, իր դաշտանին անկողինին
պէս պիտի ըլլայ իրեն. և ինչ բա–
նի վրայ որ կը նստի, իր դաշտանին
անմաքրութեանը պէս անմաքուր
27 պիտի ըլլայ ։ Եւ ամէն անոնց
դպչողը անմաքուր պիտի ըլլայ, ու
իր հանդերձները պիտի լուայ, և
ինքը ջրով լուացուի, ու մինչև
28 իրիկուն անմաքուր ըլլայ ։ Եւ խ թէ
որ իր ծորումէն մաքրուի, այն ա–
տենը եօթը օր պիտի համրէ իրեն,
29 ու անկէ ետև մաքուր ըլլայ. Եւ ու–
թերորդ օրը՝ երկու տատրակ կամ
աղաւնիի երկու ձագ պիտի առնէ
իրեն, ու ժողովքի խորանին դուռը
քահանային պիտի բերէ անոնք ։
30 Եւ քահանան՝ մէկը մեղքի պատա–
րագ՝ ու մէկալը ողջակէզ պիտի
ընէ. և քահանան Տէրոջը առջևը
քաւութիւն պիտի ընէ անոր՝ իր
անմաքրութեանը ծորումին հա–
մար ։
31 Այսպէս ծ Իսրայէլի որդիքը ի–
րենց անմաքրութիւնէն պիտի * ըզ–
գուշացընէք, որ իրենց մէջը եղած
կ իմ խորանս պղծելով՝ իրենց
անմաքրութեանը պատճառով չը–
32 մեռնին ։ հ Ծորում ունեցողին՝
ձ և իրմէ զուգաւորութեան սերմը
33 ելլելով անմաքուր եղողին, ղ Ու
իր դաշտանովը հիւանդ եղող
կնկանը՝ և ծորում ունեցող մար–
դուն ճ կամ կնկանը՝ մ ու անմա–
քուր կնկան հետ պառկող մար–
դուն օրէնքը աս է ։

Ն. Ք. Դ. 1490

խ Հմր 13; ծ Ղւ. ժա. 47; Բ Օր. իդ. 8; Եզեկ. խդ. 23; * Եբր. զատէք, կ Թուոց. ե. 3; ժթ. 13, 20; Եզեկ. ե. 11; իգ. 38; հ Հմր 2; ձ Հմր 16; ղ Հմր 19; ճ Հմր 25; մ Հմր 24;

## ԳԼ. ԺԶ

1 Քահանայապետը ի՛նչպէս պիտի մտնէր սրբու–թիւն սրբութեանցին մէջ ։ 11 Իրեն համար մատուցանելու մեղքի պատարագը ։ 15 Ժո–ղովուրդին համար մատուցանելու մեղքի պա–տարագը ։ 20 Այծու արձակուելու նախագը ։ 29 Տարեկան քաւութեան օրը ։

1 Եւ Տէրը խօսեցաւ Մովսէսին,
ա Ահարոնին երկու որդւոցը մեռ–
նելէն ետքը, որոնք Տէրոջը առ–
ջևը օտար կրակ մատուցին ու մե–
2 ռան Եւ Տէրը ըսաւ Մովսէսին.
Խօսէ՛ քու եղբօրդ Ահարոնին որ
բ ամէն ատեն սուրբ տեղը՝ վարա–
գուրին ներսի դին՝ տապանակին
վրայ եղած քաւութիւնին առջևը
չմտնէ, որ չմեռնի. ինչու որ գ ամ–
պի մէջ պիտի երևնամ քաւութիւ–
3 նին վրայ ։ Ահարոնը աս բաներով
դ պիտի մտնէ սրբարանը. ե մեղքի
պատարագի համար զուարակով

ա Ղւ. ժ. 1, 2; բ Ել. լ. 10; Ղւ. իգ. 27; Եբր. թ. 7; ժ. 19; գ Ել. իե. 22; խ. 34; Գ Թագ. ը. 10, 11, 12; դ Եբր. թ. 7, 12, 24, 25; ե Ղւ. դ. 3;

Ն. Ք. Դ. Ք. 1490

մը, և ողջակէզի համար խոյով մը ։
4 Նկտաւէ սուրբ շապիկ պիտի հագ-
նի, և իր մարմնոյն վրայէն կտաւէ
վարտիք ունենայ, ու իր մէջքը
կտաւէ գօտի կապէ, և իր գլուխը
կտաւէ խոյր դնէ. ասոնք սուրբ
զգեստներ են. ուստի Եիր մարմինը
ջրով պիտի լուայ, ու զանոնք
5 հագնի ։ Եւ Զիսրայէլի որդւոցը
ժողովքէն մեղքի պատարագի հա-
մար այծերէն երկու նոխազ՝ ու
ողջակէզի համար մէկ խոյ մը պիտի
6 առնէ ։ Եւ Ահարոն իր մեղքի
պատարագին զուարակը պիտի մա-
տուցանէ, և Էիրեն համար ու իր
տանը համար քաւութիւն պիտի
7 ընէ ։ Եւ երկու նոխազը պիտի
առնէ, ու Տէրոջը առջևը ժողովքի
8 խորանին դուռը կեցընէ ։ Եւ Ա-
հարոն ան երկու նոխազներուն վրայ
վիճակներ պիտի ձգէ. մէկ վիճակը
Տէրոջը համար՝ ու մէկալ վիճակը
ազատ արձակուելու նոխազին հա-
9 մար ։ Եւ Ահարոն պիտի մօտե-
ցընէ ան նոխազը՝ որուն վրայ Տէ-
րոջը վիճակը ելաւ, ու մեղքի պա-
10 տարագ ընէ զանիկայ ։ Եւ ան
նոխազը՝ որուն վրայ ազատ արձա-
կուելու վիճակը ելաւ, Տէրոջը առ-
ջևը ողջ պիտի կայնեցընէ՝ Թոր ա-
նով քաւութիւն ընէ, ու ազատ
արձակելու համար դէպ 'ի անապա-
տը խրկէ ։
11 Եւ Ահարոն իր մեղքի պատարա-
գին զուարակը պիտի մատուցանէ,
և իրեն համար ու իր տանը համար
քաւութիւն պիտի ընէ, և իր մեղ-
քի պատարագին զուարակը մոր-
12 թէ ։ Եւ Տէրոջը առջևը եղած
սեղանին վրայէն Էբուրվառը լեցուն
կրակի կայծեր պիտի առնէ, ու
Լբարակ ծեծուած անուշահոտ
խունկէն իր ձեռքերը լեցընէ, ու
13 վարագոյրին ներսի դին բերէ ։ Էւ
խունկը կրակին վրայ պիտի դնէ
Տէրոջը առջևը, ու խունկին *մու-
խը վկայութիւնին վրայի Ծքաւու-
թիւնը պիտի ծածկէ, որ չմեռնի ։
14 Եւ Կզուարակին արիւնէն պիտի առ-
նէ ու Գիր մատովը քաւութիւնին
վրայ արևելեան կողմը սրսկէ, և իր
մատովը արիւնէն քաւութիւնին
առջևը եօթը անգամ սրսկէ ։
15 Յեւ ժողովուրդին համար մեղքի
պատարագ ըլլալու նոխազը պիտի
մորթէ, ու անոր արիւնը Դվարա-
գուրին ներսի դին պիտի բերէ. և
զուարակին արիւնովը ըրածին պէս
ընէ անոր արիւնովը, այսինքն՝ քա-
ւութիւնին վրայ ու քաւութիւնին
16 առջևը սրսկէ ան ։ Եւ Զսրբարանին
համար քաւութիւն պիտի ընէ՝ Իս-
րայէլի որդւոցը անմաքրութիւննե-
րէն ու անոնց բոլոր մեղքերուն
յանցանքներէն [illegible].
ասանկ պիտի ընէ ժողովքի խորա-
նին համար ալ, որ անոնց հետ [illegible]
անոնց անմաքրութիւններուն մէջ
17 կը կենայ ։ Եւ սրբարանը քա-
ւութիւն ընելու մտած ատենը՝
մինչև որ իրեն համար ու իր տանը
համար և Իսրայէլի բոլոր ժողովքին
համար քաւութիւն ընէ ու դուրս
ելլէ, Ժժողովքի խորանին մէջ մարդ
18 մը պիտի չըլլայ ։ Ետքը Տէրոջը
առջևը եղած սեղանը պիտի երթայ,
ու Յանոր համար քաւութիւն ընէ.
և զուարակին արիւնէն ու նոխա-
զին արիւնէն առնէ, և սեղանին
եղջիւրներուն վրայ շուրջանակի
19 դնէ ։ Եւ արիւնէն իր մատովը
եօթը անգամ անոր վրայ պիտի
սրսկէ. ու Իսրայէլի որդւոցը ան-
մաքրութիւններէն մաքրէ, ու
Խսուրբ ընէ ան ։
20 Եւ սրբարանին՝ ու ժողովքի խո-
րանին՝ և սեղանին համար Նքա-
ւութիւն ընելը լմնցընելէն ետքը,
21 ողջ նոխազը պիտի մօտեցընէ. Եւ
Ահարոն իր երկու ձեռքերը ողջ
նոխազին գլխուն վրայ պիտի դնէ,
ու Իսրայէլի որդւոցը բոլոր անօրէ-
նութիւնները և անոնց բոլոր յան-
ցանքները և բոլոր մեղքերը պիտի
խոստովանի անոր վրայ. և Ոզա-
նոնք նոխազին գլխուն վրայ դնե-
լով՝ յարմար մարդու մը ձեռքով
22 անապատը խրկէ ։ Եւ նոխազը Նա-
նոնց բոլոր անօրէնութիւնները իր
վրան [illegible]՝ անբնակ երկիր մը պի-
տի տանի. և [illegible] անապատին
մէջ թող տայ նոխազը ։
23 Եւ Ահարոն ժողովքի խորանը
պիտի մտնէ, Պու սրբարանը մըտ-
նելու ժամանակին հագած կտաւէ
հանդերձները հանէ, և զանոնք հոն
24 դնէ ։ Եւ սուրբ տեղը իր մարմինը
ջրով պիտի լուայ, ու իր հանդերձ-
ները հագնի. Զև ելլէ իր ողջակէզը
ու ժողովուրդին ողջակէզը մատու-
ցանէ, ու իրեն համար և ժողո-
վուրդին համար քաւութիւն ընէ ։
25 Եւ Ռմեղքի պատարագին ճարպը
սեղանին վրայ պիտի այրէ ։
26 Եւ նոխազը ազատ արձակելու
տանողը՝ իր հանդերձները պիտի
լուայ, Սու իր մարմինը ջրով լուայ,
և ետքը բանակը մտնէ ։
27 ՎԵւ ան մեղքի պատարագին
զուարակը ու մեղքի պատարագին
նոխազը՝ որոնց արիւնը քաւու-
թիւն ընելու համար սուրբ տեղը
բերուեցաւ, բանակէն դուրս պի-
տի հանեն, և անոնց մորթերը ու
անոնց միսերը և անոնց աղբը կրա-
28 կով այրեն ։ Եւ զանոնք այրողը

Ն Ել. ԻԲ. 39, 42, 43 ։ Գլ. Զ. 10 ։ Եզեկ. ԽԴ. 17, 18 ։
Ե Ել. Լ. 20 ։ Գլ. Ը. 7 ։
Զ Տես Գլ. Դ. 14 ։ Թուոց ԻԹ. 11 ։ Բ Մն. ԻԹ. 21 ։ Եզր. Զ. 17 ։ Եզեկ. ԽԵ. 22, 23 ։
Է Գլ. Թ. 7 ։ Եբր. Ե. 2 ։ Է. 27, 28 ։ Թ. 7 ։
Թ Ա Յովհ. Բ. 2 ։
Է Գլ. Ժ. 1 ։ Թուոց ԺԶ. 18, 46 ։ Յայտ. Ը. 5 ։
Լ Ել. Լ. 34 ։
Ե Ել. Լ. 1, 7, 8 ։ Թուոց ԺԶ. 7, 18, 46 ։ Յայտ. Ը. 3, 4 ։
* Եբր. ամպը
Ծ Ել. ԻԵ. 21 ։
Կ Գլ. Դ. 5 ։ Եբր. Թ. 13, 25 ։ Ժ. 4 ։
Գ Գլ. Դ. 6 ։
Յ Եբր. Բ. 17 ։ Ե. 2 ։ Թ. 7, 28 ։
Դ Համր 2 ։ Եբր. Զ. 19 ։ Թ. 3, 7, 12 ։
Զ Տես Ել. ԻԹ. 36 ։ Եզեկ. ԽԵ. 18 ։ Եբր. Թ. 22, 23 ։

Ժ Տես Ղուկ. Ա. 10 ։
Յ Ել. Լ. 10 ։ Գլ. Դ. 7, 18 ։ Եբր. Թ. 22, 23 ։
Խ Եզեկ. ԽԳ. 20 ։
Ն Համր 16 ։ Եզեկ. ԽԵ. 20 ։
Ո Ես. ԾԳ. 6 ։
Ն Ես. ԾԳ. 11, 12 ։ Յովհ. Ա. 29 ։ Եբր. Թ. 28 ։ Ա Պետ. Բ. 24 ։
Պ Եզեկ. ԽԲ. 14 ։ ԽԴ. 19 ։
Զ Համր 3, 5 ։
Ռ Գլ. Դ. 10 ։
Ս Գլ. ԺԵ. 5 ։
Վ Գլ. Դ. 12, 21 ։ Զ. 30 ։ Եբր. ԺԳ. 11 ։

Ն. Ք. Ա. Ք. 1490

Ել. Լ. 10 ։ Գլ. ԻԳ. 27 ։ Թու. ԻԹ. 7 ։ Ես. ԾԸ. 3, 5 ։ Դան. Ժ. 3, 12 ։
Սաղ. Ծա. 2 ։ Երեմ. ԼԳ. 8 ։ Եփե. Ե. 26 ։ Եբր. Թ. 13, 14 ։ Ժ. 1, 2 ։ Ա Յովհ. Ա. 7, 9 ։
Գլ. ԻԴ. 32 ։
Գլ. Դ. 3, 5, 16 ։
Ել. ԻԹ. 29, 30 ։ Թու. Ի. 26, 28 ։
Համր 4 ։
Համր 6, 16, 18, 19, 24 ։
Գլ. ԻԴ. 31 ։ Թու. ԻԹ. 7 ։
Ել. Լ. 10 ։ Եբր. Թ. 7, 25 ։
Բ Օր. ԺԲ. 5, 15, 21 ։
Բ Օր. ԺԲ. 5, 6, 13, 14 ։
Ծն. ԺԷ. 14 ։
Ծն. ԻԱ. 33 ։ ԻԲ. 2 ։ ԼԱ. 54 ։ Բ Օր. ԺԲ. 2 ։ Գ Թագ. ԺԴ. 23 ։ Դ Թագ. ԺԶ. 4 ։ ԺԷ. 10 ։ Բ Մն. ԻԸ. 4 ։ Եզեկ. Ի. 28 ։ ԻԲ. 9 ։

իր հանդերձները պիտի լուայ , ու
մարմինը ջրով լուայ , ու ետքը բա-
նակը մտնէ ։
29 Եւ աս ձեզի յաւիտենական կա-
նոն ըլլայ , որ եօթներորդ ամսուն
մէջ՝ ամսուն տասներորդ օրը ձեր
անձերը պիտի խոնարհեցնէք , ու
բնաւ գործ մը չգործէք , թէ երկ-
րացին՝ և թէ ձեր մէջը գտնուող
30 օտարականը ։ Քանզի այն օրը քա-
հանան ձեզի քաւութիւն պիտի ընէ
ձեզ մաքրելու համար , որ ձեր
բոլոր մեղքերէն մաքրուիք Տէրոջը
31 առջեւ ։ Այն ձեզի հանգստու-
թեան շաբաթ պիտի ըլլայ , և յա-
ւիտենական կանոնով մը պիտի
32 խոնարհեցնէք ձեր անձերը ։ Եւ իր
հօրը տեղը քահանայութիւն ընե-
լու համար օծուած ու օրհնուած
քահանան քաւութիւնը պիտի ը-
նէ , և հագնի կտաւէ հանդերձնե-
րը այսինքն սուրբ հանդերձները ։
33 Եւ ամենասուրբ տեղին համար
քաւութիւն պիտի ընէ , և ժողով-
քի խորանին համար ու սեղանին
համար քաւութիւն ընէ , և քա-
հանաներուն ու ժողովքին բոլոր
ժողովուրդին համար քաւութիւն
34 ընէ ։ Եւ ասիկայ ձեզի յաւիտե-
նական կանոն ըլլայ՝ Իսրայէլի որ-
դւոցը համար իրենց բոլոր մեղքե-
րուն քաւութիւն ընելու տարին
անգամ մը ։ Եւ այնպէս՝ Տէրոջը
Մովսէսին պատուիրածին պէս ը-
րաւ

## ԳԼ. ԺԷ

1 Ամէն մորթուած անասուններուն արիւնը Տէ-
րոջը պիտի մատուցուէր խորանին դրանը
քով ։ 7 Դեւերուն զոհ ընելը կ'արգիլուի ։
10 Ամէն արիւնոտ բանը , 15 ու մեռածը և
գազանէ փառատուածը ուտելը կ'արգիլուի ։

1 Ու Տէրը խօսեցաւ Մովսէսին՝ ը-
2 սելով . Խօսէ Ահարոնին ու ա-
նոր որդւոցը՝ և Իսրայէլի բոլոր որ-
դւոցը , ու ըսէ անոնց . Աս է որ
3 Տէրը պատուիրեց՝ ըսելով . Իսրա-
յէլի տունէն ով որ արջառ մը
կամ ոչխար մը և կամ այծ մը բա-
նակին մէջ մորթէ , կամ բանակէն
4 դուրս մորթէ , Եւ Տէրոջը խո-
րանին առջեւ Տէրոջը զոհ մատու-
ցանելու համար՝ ժողովքի խորա-
նին դուռը չբերէ , արիւնոտ պիտի
սեպուի այն մարդը . անիկայ արիւն
թափած է . ու այն մարդը իր
ժողովուրդին մէջէն պիտի կոր-
5 սուի . Որպէս զի Իսրայէլի որդիքը
այն զոհերը որ հիմա դաշտի մէջ
կը մորթեն , Տէրոջը բերեն , այս-
ինքն՝ ժողովքի խորանին դուռը
քահանային բերեն , և խաղաղու-
թեան զոհերու համար զանոնք
6 Տէրոջը մատուցանեն ։ Եւ քահա-
նան պիտի սրսկէ արիւնը ժողովքի
խորանին դուռը՝ Տէրոջը սեղանին
վրայ , ու ճարպը անուշ հոտի
7 համար այրէ Տէրոջը առջեւ ։ Եւ
իրենց զոհերը ալ պիտի չմորթեն
դեւերուն՝ որոնց ետեւէն շնալով
պոռնկութիւն ըրին . ասիկայ ա-
նոնց յաւիտենական կանոն պիտի
8 ըլլայ իրենց ազգերուն մէջ ։ Եւ
պիտի ըսես անոնց . Իսրայէլի տու-
նէն կամ ձեր մէջը պանդխտացած
օտարականներէն մէկ մարդ մը ողջ-
ակեզ կամ զոհ մատուցանելու
9 ըլլայ , Եւ զանիկայ Տէրոջը մա-
տուցանելու համար ժողովքի խո-
րանին դուռը չբերէ , այն մարդը իր
ժողովուրդին մէջէն պիտի կոր-
սուի ։
10 Եւ Իսրայէլի տունէն կամ ձեր
մէջը պանդխտացած օտարականնե-
րէն մէկ մարդ մը ինչ և իցէ արիւն
ուտելու ըլլայ , իմ երեսս այն ա-
րիւն ուտող անձին վրայ պիտի
տնկեմ , ու զանիկայ իր ժողովուր-
11 դին մէջէն կորսնցընեմ . Ինչու
որ մարմինին կենդանութիւնը ա-
րիւնին մէջն է . և ես ձեզի տուի
այն , որ սեղանին վրայ ձեր հոգի-
ներուն համար քաւութիւն ընէք .
քանզի հոգիին համար քաւութիւն
12 ընողը արիւնն է ։ Անոր համար
Իսրայէլի որդւոցը ըսի . Ձեզմէ մէ-
կը արիւն պիտի չուտէ . ձեր մէջը
պանդխտացած օտարականն ալ ա-
13 րիւն չուտէ ։ Եւ Իսրայէլի որդւոց-
մէ՝ կամ ձեր մէջը պանդխտացած
օտարականէն մէկը՝ ուտուելու
վայրենի անասունի կամ թռչունի
որս որսալու ըլլայ , անոր արիւնը
պիտի թափէ , ու հողով ծածկէ
14 զայն ։ Ինչու որ ամէն մարմինին
կենդանութիւնը՝ իր արիւնն է .
անիկայ է անոր կենդանութիւնը .
ուստի Իսրայէլի որդւոցը ըսի .
Բնաւ մարմինի մը արիւնը պիտի
չուտէք . քանզի ամէն մարմինին
կենդանութիւնը՝ իր արիւնն է .
ով որ ուտէ զայն՝ պիտի կորսուի ։
15 Եւ երկրացիներէն կամ օտարա-
կաններէն՝ դի կամ փառատուած
ուտող ամէն մարդ՝ իր լաթերը
պիտի լուայ , ու ինքը ջրով լուա-
ցուի , և մինչեւ իրիկուն անմաքուր
16 ըլլայ , ու ետքը մաքուր ըլլայ . Բայց
թէ որ չլուայ զանոնք , և իր մարմի-
նը չլուայ , այն ատենը իր անօրէ-
նութիւնը պիտի կրէ ։

## ԳԼ. ԺԸ

1 Ապօրինաւոր ամուսնութիւններուն համար ։
19 Ապօրինաւոր ցանկութիւններուն համար ։

1 Ու Տէրը խօսեցաւ Մովսէսին՝ ը-
2 սելով . Խօսէ Իսրայէլի

Ն. Ք. Ա. Ք. 1490

Գլ. Գ. 2 ։ Ել. ԻԹ. 18 ։ Գլ. Գ. 5, 11, 16 ։ Դ. 31 ։ Թու. ԺԸ. 17 ։
Բ Օր. ԼԲ. 17 ։ Բ Մն. ԺԱ. 15 ։ Սաղ. ՃԶ. 37 ։ Ա Կոր. Ժ. 20 ։ Յայտ. Թ. 20 ։
Ել. ԼԴ. 15 ։ Գլ. Ի. 5 ։ Բ Օր. ԼԱ. 16 ։ Եզեկ. ԻԳ. 8 ։
Գլ. Ա. 2, 3 ։
Համր 4 ։
Ծն. Թ. 4 ։ Գլ. Գ. 17 ։ Է. 26, 27 ։ ԺԹ. 26 ։ Բ Օր. ԺԲ. 16, 23 ։ ԺԵ. 23 ։ Ա Թագ. ԺԴ. 33 ։ Եզեկ. ԽԴ. 7 ։
Գլ. Ի. 3, 5, 6 ։ ԻԴ. 17 ։ Երեմ. ԽԴ. 11 ։ Եզեկ. ԺԴ. 8 ։ ԺԵ. 7 ։
Համր 14 ։
Մատ. ԻԶ. 28 ։ Մար. ԺԴ. 24 ։ Հռով. Գ. 25 ։ Ե. 9 ։ Եփե. Ա. 7 ։ Կող. Ա. 14, 20 ։ Եբր. ԺԳ. 12 ։ Ա Պետ. Ա. 2 ։ Ա Յովհ. Ա. 7 ։ Յայտ. Ա. 5 ։
Եբր. Թ. 22 ։
Գլ. Է. 26 ։
Բ Օր. ԺԲ. 16, 24 ։ ԺԵ. 23 ։
Եզեկ. ԻԴ. 7 ։
Համր 11, 12 ։ Ծն. Թ. 4 ։ Բ Օր. ԺԲ. 23 ։
Ել. ԻԲ. 31 ։ Գլ. ԻԲ. 8 ։ Բ Օր. ԺԴ. 21 ։ Եզեկ. Դ. 14 ։ ԽԴ. 31 ։
Գլ. ԺԱ. 25 ։
Գլ. ԺԵ. 5 ։
Գլ. Ե. 1 ։ Է. 18 ։ ԺԹ. 8 ։ Թու. ԺԹ. 20 ։

Ն. Ք. ԶՔ.
1490

ա Հմր 4 ։ Եւ. զ. 7 ։ Գւ. ժա. 44 ։ ժթ. 4, 10, 34 ։ ի. 7 ։ Եզեկ. ի. 5, 7, 19, 20 ։
բ Եզեկ. ի. 7, 8 ։ իգ. 8 ։
գ Եւ. իգ. 24 ։ Գւ. ի. 23 ։ բ Օր. ժբ. 4, 30, 31 ։
դ բ Օր. դ. 1, 2 ։ զ. 1 ։ Եզեկ. ի. 19 ։
ե Եզեկ. ի. 11, 13, 21 ։ Ղու. ժ. 28 ։ Հռով. ժ. 5 ։ Գաղ. գ. 12 ։
զ Եւ. զ. 2, 6, 29 ։ Մաղ. դ. 6 ։
է Գւ. ի. 11 ։
ը Ծն. խթ. 4 ։ Գւ. ի. 11 ։ բ Օր. իբ. 30 ։ իէ. 20 ։ Եզեկ. իբ. 10 ։ Ամով. բ. 7 ։ ա Կոր. ե. 1 ։
թ Գւ. ի. 17 ։ բ Թագ. ժգ. 12 ։ Եզեկ. իբ. 11 ։
ժ Գւ. ի. 19 ։
ի Գւ. ի. 20 ։
լ Ծն. լը. 18, 26 ։ Գւ. ի. 12 ։ Եզեկ. իբ. 11 ։
խ Գւ. ի. 21 ։ Մատ. ժդ. 4 ։ Տեւ. բ Օր. իե. 5 ։ Մատ. իբ. 24 ։ Մար. ժբ. 19 ։
ծ Գւ. ի. 14 ։
կ Աթագ. ժա. 6, 8 ։
հ Գւ. ի. 18 ։ Եզեկ. ժբ. 6 ։ իբ. 10 ։

ցը՝ ու ըսէ անոնց . ա Ես եմ Եհո-
3 վայ ձեր Աստուածը ։ բ Այն ձեր
բնակած Եգիպտոսի երկրին բրա-
ծին պէս՝ պիտի չընէք . և գ Քա-
նանու երկրին բրածին պէս՝ ուր որ
ձեզ պիտի տանիմ , պիտի չընէք ,
ու անոնց կանոններուն համեմատ
4 պիտի չքալէք ։ դ Իմ դատաստան-
ներս պիտի ընէք , և իմ կանոններս
պահէք , որ անոնցմով քալէք . ես
5 եմ Տէրը ձեր Աստուածը ։ Ուստի
իմ կանոններս ու իմ դատաստան-
ներս պիտի պահէք , ե որ զանոնք
կատարող մարդը անոնցմով պիտի
ապրի . զ Ես եմ Տէրը ։
6 Բնաւ մէկը իր մօտ ազգականին
պիտի չմօտենայ՝ անոր մերկութիւ-
նը բանալու համար . ես եմ Տէրը ։
7 է Քու հօրդ մերկութիւնը կամ քու
մօրդ մերկութիւնը պիտի չբանաս .
անիկայ քու մայրդ է . անոր մեր-
8 կութիւնը պիտի չբանաս ։ ը Քու
հօրդ կնկանը մերկութիւնը պիտի
չբանաս . ան քու հօրդ մերկու-
9 թիւնն է ։ թ Քու հօրդ աղջկանը
կամ քու մօրդ աղջկանը քու քը-
րոջդ մերկութիւնը՝ թէ՛ տանը մէջ
ծնած ըլլայ՝ թէ դուրսը ծնած
անոնց մերկութիւնը պիտի չբա-
10 նաս ։ Քու որդւոյդ աղջկանը կամ
քու աղջկկիդ աղջկանը մերկութիւ-
նը՝ անոնց մերկութիւնը պիտի չը-
բանաս . ինչու որ անոնց մերկու-
11 թիւնը քուկդ է ։ Քու հօրդ կըն-
կանը աղջկկին մերկութիւնը՝ քու
հօրմէդ ծնած քու քոյրդ ըլլալովը՝
անոր մերկութիւնը պիտի չբանաս ։
12 ժ Քու հօրդ քրոջը մերկութիւնը
պիտի չբանաս . անիկայ քու հօրդ
13 ազգականն է ։ Քու մօրդ քրոջը
մերկութիւնը պիտի չբանաս . ինչու
որ անիկայ քու մօրդ ազգականն
14 է ։ ի Քու հօրդ եղբօրը մերկու-
թիւնը պիտի չբանաս անոր կըն-
կանը չմօտենաս . անիկայ քու հօ-
15 րաքոյրդ է (Կամ՝ հօրաքրոջդ) ։ լ Քու հար-
սիդ մերկութիւնը պիտի չբանաս .
անիկայ քու որդւոյդ կնիկն է . անոր
16 մերկութիւնը չբանաս ։ խ Քու եղ-
բօրդ կնկանը մերկութիւնը պիտի
չբանաս . ան քու եղբօրդ մերկու-
17 թիւնն է ։ ծ Կնկան մը ու անոր
աղջկանը մերկութիւնը պիտի չբա-
նաս . և անոր որդւոյն աղջիկը կամ
անոր աղջկանը աղջիկը պիտի չառ-
նես՝ անոնց մերկութիւնը բանալու
համար . անոնք անոր ազգական-
ներն են . անօրէնութիւն է ան ։
18 Եւ կնիկ մը իր քրոջը հետ պիտի
չառնես (Կամ՝ իբրեւ) իր կենդանութեան
ատենը վշտացընելու համար՝ մէ-
կալին մերկութիւնը բանալով ։
19 կ Եւ իր անմաքրութեանը ատենը
զատուած կնկան մը պիտի չմօտե-
նաս՝ անոր մերկութիւնը բանալու ։
20 Եւ հ զուգաւորութեան համար
քու դրացիիդ կնկանը հետ պիտի
չպառկիս , անոր հետ պղծուելով ։
21 Քու սերունդէդ Մողոքին համար
(կրակէ) անցընելու պիտի չթողուս ,
և յ քու Աստուծոյդ անունը չպըղ-
22 ծես . ես եմ Տէրը ։ ն Եւ արուի
հետ՝ կնկան հետ պառկելու պէս պի-
տի չպառկիս . պղծութիւն է ան ։
23 շ Եւ բնաւ անասունի մը հետ պիտի
չզուգաւորիս , անոր հետ պղծուե-
լով . ու բնաւ կնիկ մը անասունի
մը առջև պիտի չկայնի՝ անոր հետ
զուգաւորելու . խառնակութիւն
է ան ։
24 ո Ասոնց մէկովն ալ բնաւ չպըղ-
ծուիք . չ ինչու որ բոլոր ասոնց-
մով պղծուեցան այն ազգերը՝ որ
25 ձեր առջևէն պիտի վռընտեմ ։ Եւ
պ այն երկիրը պղծուելովը՝ ջ անոր
անօրէնութիւնը անոր վրայ պիտի
հատուցանեմ , ու այն երկիրը իր
26 բնակիչները ռ պիտի փսխէ ։ ս Ուս-
տի դուք իմ կանոններս ու դա-
տաստաններս պիտի պահէք , ու
աս պղծութիւններէն մէկն ալ պի-
տի չընէք , ո՛չ երկրացին , ո՛չ ալ
ձեր մէջը պանդխտացող օտարա-
27 կանը . Քանզի ձեզմէ առաջ այն
երկրին մարդիկը աս բոլոր պղծու-
թիւնները ըրին , ու այն երկիրը
28 պղծուեցաւ ։ Ուրեմն զգուշացէ՛ք՝
որ չըլլայ թէ վ այն երկիրը ձեզ ալ
դուրս փսխէ՝ այն պղծած ատեն-
նիդ , ինչպէս որ ձեզմէ առաջ եղած
29 ազգերը փսխեց ։ Քանզի ո՛վ որ
աս ամէն պղծութիւններէն մէկը
ընելու ըլլայ , այն ընող անձինքը
իրենց ժողովուրդին մէջէն պիտի
30 կորսուին ։ Ուստի իմ հրամաններս
պիտի պահէք , տ որ ձեզմէ առաջ
գործուած պիղծ սովորութիւննե-
րէն մէկը չընէք , ու անոնցմով
ր չպղծուիք . ց ես եմ Տէրը ձեր Աս-
տուածը ։

ԳԼ. ԺԹ

1—37 Զանազան օրէնքներու կրկնութիւն ։

1 Եւ Տէրը խօսեցաւ Մովսէսին՝ ը-
2 սելով . Խօսէ Իսրայէլի որդւո-
ցը բոլոր ժողովքին՝ ու ըսէ անոնց .
ա Դուք սուրբ եղէք . ինչու որ ես
ձեր Եհովայ Աստուածը սուրբ եմ ։
3 բ Ձեր ամէն մէկը իր մօրմէն ու իր
հօրմէն պիտի վախնայ . և գ իմ շա-
բաթներս պիտի պահէք . ես եմ
Տէրը ձեր Աստուածը ։
4 դ Կուռքերուն ետևէն մի՛ խոտո-

Ն. Ք. ԶՔ.
1490

յ Գւ. ի. 10 ։ Եւ. ի. 14 ։ բ Օր. ե. 18 ։ իբ. 22 ։ Առակ. զ. 29, 32 ։ Մաղ. գ. 5 ։ Մատ. ե. 27 ։ Հըռով. բ. 22 ։ ա Կոր. զ. 9 ։ Եբր. ժգ. 4 ։
ղ դ Թագ. ժա. 7, 33 ։ Գոր. է. 43 ։
ճ Գւ. ի. 2 ։ դ Թագ. ժզ. 3 ։ իա. 6 ։ իգ. 10 ։ Երեմ. ժթ. 5 ։ Եզեկ. ի. 31 ։ իգ. 37, 39 ։
մ Գւ. ժթ. 12 ։ ի. 3 ։ իա. 6 ։ իբ. 2, 32 ։ Եզեկ. լզ. 20, 23 ։ Մաղ. ա. 12 ։
յ Գւ. ի. 13 ։ Հռով. ա. 27 ։ ա Կոր. զ. 9, 10 ։ ա Տիմ. ա. 10 ։
ն Գւ. ի. 15, 16 ։ Եւ. իբ. 19 ։
շ Գւ. ի. 12 ։
ո Հմր 30 ։ Մատ. ժե. 18, 19, 20 ։ Մար. է. 21, 22, 28 ։ ա Կոր. գ. 17 ։
չ Գւ. ի. 23 ։ բ Օր. ժը. 12 ։
պ Թուե. լե. 34 ։ Երեմ. բ. 7 ։ ժզ. 18 ։ Եզեկ. լզ. 17 ։
ջ Սաղ. ձթ. 32 ։ Ես. իզ. 21 ։ Երեմ. ե. 9, 29 ։ թ. 9 ։ ժզ. 10 ։ իգ. 2 ։ Ովս. ր. 13 ։ ը. 13 ։ թ. 9 ։
ռ Հմր 28 ։
ս Հմր 5, 30 ։ Գւ. ի. 22, 23 ։
վ Գւ. ի. 22 ։ Երեմ. թ. 19 ։ Եզեկ. լզ. 13, 17 ։
տ Հմր 3, 26 ։ Գւ. ի. 23 ։ բ Օր. ժը. 9 ։
ր Հմր 24 ։
ց Հմր 2, 4 ։

ա Գւ. ժա. 44 ։ ի. 7, 26 ։ ա Պետ. ա. 16 ։ բ Ել. ի. 12 ։
գ Ել. ի. 8 ։ լա. 13 ։ դ Ել. ի. 4 ։ Գւ. իզ. 1 ։ ա Կոր. ժ. 14 ։ ա Յօհ. ե. 21 ։

Ն. Ք. Գ. Ք.
1490

ե Ել. լդ. 17։ բ Օր. իէ. 15։
ղ Ղւ. է. 16։
ե Ղւ. իգ. 22։ բ Օր. իդ. 19, 20, 21։ Հռութ. բ. 15, 16։
ը Ել. ի. 15։ իբ. 1, 7, 10։ բ Օր. ե. 19։
թ Ղւ. զ. 2։ Եփե. դ. 25։ Կող. գ. 9։
ժ Ել. ի. 7։ Ղւ. զ. 3։ բ Օր. ե. 11։ Մատ. ե. 33։ Յակ. ե. 12։
ի Ղւ. ժը. 21։
լ Մար. ժ. 19։ ա Թես. դ. 6։
խ բ Օր. իդ. 14, 15։ Մաղ. գ. 5։ Յակ. ե. 4։
ծ բ Օր. իէ. 18։ Հռով. ժդ. 13։
կ Հմր 32։ Ղւ. իե. 17։ Ծն. խբ. 18։ Ժող. ե. 7։ ա Պետ. բ. 17։
հ Ել. իգ. 2, 3։ բ Օր. ա. 17։ ժզ. 19։ իէ. 19։ Սաղ. ձբ. 2։ Առակ. իդ. 23։ Յակ. բ. 9։
ձ Ել. իգ. 1։ Սաղ. ժե. 3։ ծ. 20։ Առակ. ժա. 13։ ի. 19։ Եզեկ. իբ. 9։
ղ Ել. իգ. 1, 7։ գ Թագ. իա. 13։ Մատ. իզ. 60, 61։ իէ. 4։
ճ ա Յօհ. բ. 9, 11։ գ. 15։
մ Մատ. ժը. 15։ Ղուկ. ժէ. 3։ Գաղ. զ. 1։ Եփե. ե. 11։ ա Տիմ. ե. 20։ բ Տիմ. դ. 2։ Տիտ. ա. 13։ բ. 15։

rիք, [ե] և ձեզի ձուլածոյ աստուած-
ներ մի՛ շինէք. ես եմ Տէրը ձեր
Աստուածը ։
5 Եւ [ղ] թէ որ խաղաղութեան զոհ
մատուցանէք Տէրոջը, [ը] անանկ մա-
6 տուցէք՝ որ ընդունելի ըլլայ ։ Զո-
հը մատուցած օրերնիդ՝ և հե-
տևեալ օրն ալ պիտի ուտուի. ու
երրորդ օրուան մնացածը կրակով
7 պիտի այրուի ։ Եւ թէ որ անկէ
երրորդ օրը ուտուելու ըլլայ, ան
8 պիղծ է, պիտի չընդունուի ։ Եւ
զանիկայ ուտողը իր անօրէնու-
թիւնը պիտի կրէ, ինչու որ Տէրո-
ջը սուրբ բանը պղծեց, ու ան ան-
ձը իր ժողովուրդէն պիտի կոր-
սուի ։
9 Եւ [ե] ձեր երկրին հունձքը հնձելու
ատեննիդ՝ քու արտիդ եզերքը լման
պիտի չհնձես, ու քու հունձքէդ
ինկած հասկերը պիտի չժողվես ։
10 Եւ քու այգիդ ճռաքաղ պիտի չը-
նես, այսինքն այգիիդ մէջ մնացած
ողկոյզները պիտի չքաղես. զանոնք
աղքատին ու օտարականին համար
պիտի թողուս. ես եմ Տէրը ձեր
Աստուածը ։
11 [ը] Գողութիւն մի՛ ընէք. սուտ մի՛
զրուցէք, [թ] և մէկզմէկ մի՛ խաբէք.
12 Եւ [ժ] իմ անունովս սուտ տեղը եր-
դում մի՛ ընէք. [ի] ու ձեր Աստուծոյն
անունը մի՛ պղծէք. ես եմ Տէրը ։
13 [լ] Քու դրացիիդ զրկանք մի՛ ըներ, և
յափշտակութիւն մի՛ ըներ. [խ] քեզի
վարձքով բանողին օրական վարձ-
քը մէկ գիշեր մինչև առտու քու
քովդ չմնայ ։
14 Խուլին մի՛ հայհոյեր, [ծ] ու կոյրին
առջևը գայթակղութիւն մի՛ դներ,
հապա [կ] քու Աստուծմէդ վախցիր.
ես եմ Տէրը ։
15 [հ] Դատաստանի մէջ անիրաւու-
թիւն մի՛ ընէք. աղքատին աչա-
ռութիւն մի՛ ըներ, և մեծը մի՛ շո-
ղոքորթեր. քու դրացիդ արդարու-
թիւնով դատէ ։
16 [ձ] Քու ժողովուրդիդ մէջը չարա-
խօսութիւն ընելու չպտըտիս. [ղ] քու
ընկերիդ արիւնը մտնելու պատճառ
17 չըլլաս. ես եմ Տէրը ։ [ճ] Եղբայրդ
քու սրտիդ մէջը պիտի չատես.
[մ] քու դրացիդ անպատճառ պիտի
յանդիմանես, [յ] որ անոր համար
18 մեղք չկրես ։ [ն] Վրէժ պիտի չառնես,
և քու ժողովուրդիդ որդւոցը ոխ
պիտի չպահես, [շ] հապա քու ընկերդ
քու անձիդ պէս պիտի սիրես. ես
եմ Տէրը ։
19 Իմ կանոններս պիտի պահէք.
քու անասուններդ մէկ տեսակը ուրիշ
տեսակին հետ զուգաւորել պիտի
չտաս. [ո] քու արտիդ մէջ զանազան
սերմ պիտի չցանես. [չ] և երկու
նիւթէ գործուած այլայլախառն
հանդերձ պիտի չհագնիս ։
20 Եւ թէ որ մէկը կնկան մը հետ
պառկելով՝ զուգաւորութիւն ընէ,
ու անիկայ մէկու մը ծախու առած
աղախինն է՝ ու փրկուած չէ, ոչ
ալ անոր ազատութիւն տրուած,
անոնք պիտի պատժուին. անոնք
պիտի չմեռնին, ինչու որ ան [illegible]
21 ազատ չէր ։ Եւ [պ] մարդը իր յան-
ցանքին պատարագը Տէրոջը պիտի
բերէ ժողովքի խորանին դուռը,
խոյ մը յանցանքի պատարագի հա-
22 մար ։ Եւ քահանան յանցանքի
պատարագին խոյովը Տէրոջը առ-
ջևը քաւութիւն պիտի ընէ անոր՝
իր ըրած մեղքին համար. և անոր
ըրած մեղքը պիտի ներուի իրեն ։
23 Ու երբոր ան երկիրը մտնէք, ու
ամէն տեսակ ծառեր տնկէք՝ [illegible]
ուտելու համար, ան ատենը անոր
պտուղը չթլփատուածի պէս ան-
մաքուր պիտի սեպէք. ան ձեզի ի-
րեք տարի չթլփատուածի պէս սե-
24 պուելով՝ պիտի չուտուի ։ Եւ չոր-
րորդ տարին՝ անոր բոլոր պտուղը
[ջ] Տէրը փառաւորելու համար՝ սուրբ
25 պիտի ըլլայ ։ Եւ հինգերորդ տա-
րին՝ անոր պտուղը պիտի ուտէք,
որ իր արդիւնքը ձեզի համար աւել-
ցընէ. ես եմ Տէրը ձեր Աստուա-
26 ծը ։ Միսը [ռ] արիւնովը պիտի չու-
տէք. [ս] պիտի չհմայէք, և գուշա-
27 կութիւն պիտի չընէք ։ [վ] Ձեր գըլ-
խերուն եզերքի մազերը պիտի չկըտ-
րէք, ու քու մօրուքիդ եզերքը
28 պիտի չաւրես ։ Եւ մէկու մը [illegible]-
[illegible] համար [տ] ձեր մարմիններուն վրայ
կտրածներ պիտի չընէք, ու ձեր
վրան գիրի նշան չընէք. ես եմ
Տէրը ։
29 [ր] Աղջիկդ պոռնիկ ընելով՝ մի՛
պղծեր, որ երկիրը պոռնկութեան
մէջ չիյնայ, ու երկիրը չարութիւ-
նով չլեցուի ։
30 [ց] Իմ շաբաթներս պիտի պահէք,
ու [ւ] իմ սրբարանէս վախնաք. ես
31 եմ Տէրը ։ [փ] Վհուկներուն մի՛ հե-
տևիք, և հմայողներուն բան մի՛
հարցընէք, որ անոնցմով չպղծ-
ուիք. ես եմ Տէրը ձեր Աստուա-
ծը ։
32 [ք] Մազը ճերմկածին առջևը ոտք
ելլէր, և ծերը պատուէ, ու [օ] քու
Աստուծմէդ վախցիր. ես եմ Տէ-
րը ։
33 Եւ [ֆ] թէ որ օտարական մը ձեր
երկրին մէջ ձեր քովը պանդխտա-
նալու ըլլայ, չնեղէք զանիկայ ։

Ն. Ք. Գ. Ք.
1490

ո բ Օր. իբ. 9, 10։
չ բ Օր. իբ. 11։
պ Ղւ. ե. 15։ զ. 6։
ջ բ Օր. ժբ. 17, 18։ Առակ. գ. 9։
ռ Ղւ. ժէ. 10, [illegible] բ Օր. ժբ. 23։
ս բ Օր. ժը. 10, 11, 14։ ա Թագ. ժե. 23։ դ Թագ. ժէ. 17։ իա. 6։ բ Մն. լգ. 6։ Մաղ. գ. 5։
վ Ղւ. իա. 5։ Երեմ. թ. 26։ խը. 37։ Ես. ժե. 2։
տ Ղւ. իա. 5։ բ Օր. ժդ. 1։ Երեմ. ժզ. 6։ խը. 37։
ր բ Օր. իգ. 17։
ց Հմր 3։ Ղւ. իզ. 2։
ւ Ժող. ե. 1։
փ Ել. իբ. 18։ Ղւ. ի. 6, 27։ բ Օր. ժը. 10։ ա Թագ. իը. 7։ ա Մն. ժ. 13։ Ես. ը. 19։ Գոր. ժզ. 16։
ք Առակ. ի. 29։ ա Տիմ. ե. 1։
օ Հմր 14։
ֆ Ել. իբ. 21։ իգ. 9։

յ Տե՛ս Հռով. ա. 32։ ա Կոր. ե. 2։ ա Տիմ. ե. 22։ բ Յօհ. 11։ ն բ Թագ. ժգ. 22։ Առակ. ի. 22։ Հռով. ժբ. 17, 19։ Գաղ. ե. 20։ Եփե. դ. 31։ ա Պետ. բ. 1։ Յակ. ե. 9։ շ Մատ. ե. 43։ իբ. 39։ Հռով. ժգ. 9։ Գաղ. ե. 14։ Յակ. բ. 8։

Ն. Ք. Դ՟. 1490

ա Ել. ժբ. 48, 49: բ Բ Օր. ժ. 19:
գ Հռ 15:
դ Բ Օր. իե. 13, 15: Առակ. ժա. 1: ժզ. 11: ի. 10:
ե Ղւ. ժը. 4. 5: Բ Օր. դ. 5, 6: ե. 1: զ. 25:

34 Ձեր քովը պանդխտացող օտարականը՝ ձեր երկրին բնակին պէս ըլլայ ձեզի, և Քու անձիդ պէս պիտի սիրես անիկայ. ինչու որ դուք ալ Եգիպտոսի երկրին մէջ օտարական էիք. ես եմ Տէրը ձեր Աստուածը:
35 Դատաստանի մէջ անիրաւութիւն պիտի չընէք. կանգունի մէջ՝ կշիռքի մէջ ու չափի մէջ ալ:
36 Ձեր կշիռքները լման՝ ձեր կշռոց քարերը լման՝ ձեր արդուն լման ու հիմէնը լման պիտի ըլլայ. ձեզ Եգիպտոսի երկրէն հանող Տէրը ձեր
37 Աստուածը ես եմ: Ուստի իմ բոլոր կանոններս ու իմ բոլոր դատաստաններս պիտի պահէք, և պիտի ընէք անոնք. ես եմ Տէրը:

ԳԼ. Ի

1 Մողոքին զաւակ նուիրելը կ'արգիլուի: 4 Անոր զաւակ մատուցուիլը տեսնելով զանց ընողներուն պատիժը: 6 Վհուկներու հետեւողներուն համար: 7 Սուրբ ըլլալու պատուէրը: 9 Իր ծնողքը հայհոյողին: 10 շնութիւն ընողներուն, 11. 14. 17. 19 ազգապղծին, 13 արուագէտին, 15 և անասունի հետ պղծութիւն ընողին պատիժը: 22 Աստուծոյ հնազանդելու վրայով: 27 Վհուկները չապրեցընելու պատուէրը:

ա Ղւ. ժը. 21:
բ Ղւ. ժը. 21: Բ Օր. ժբ. 31: ժը. 10: Դ Թագ. ժէ. 17: իգ. 10: Բ Մն. լգ. 6: Երեմ. է. 31: լբ. 35: Եզեկ. ի. 26, 31:
գ Ղւ. ժէ. 10:
դ Եզեկ. ե. 11: իգ. 38, 39:
ե Ղւ. ժը. 21:
զ Բ Օր. ժէ. 2, 3, 5:
է Ղւ. ժէ. 10:
ը Ել. ի. 5:
թ Ղւ. ժէ. 7:
ժ Ղւ. ժթ. 31:
* Եբր. պոռնըկելու
ժա Ղւ. ժա. 44: ժթ. 2: Ա Պետ. ա. 16:
ժբ Ղւ. ժթ. 37:

1 Եւ Տէրը խօսեցաւ Մովսէսին՝ ը-
2 սելով. Նաև Իսրայէլի որդւոցը պիտի ըսես. Իսրայէլի որդւոցմէն և Իսրայէլի մէջ պանդխտացող օտարականներէն ով որ իր սերունդէն Մողոքին տայ, անշուշտ պիտի մեռցուի. ան երկրին ժողովուրդը քարերով պիտի քարկոծեն անի-
3 կայ: Եւ Ես իմ երեսս ան մարդուն վրայ պիտի տնկեմ, ու զանիկայ իր ժողովուրդին մէջէն կորսընցընեմ. ինչու որ անիկայ իր սերունդէն Մողոքին տուած է՝ իմ սրբարանս պղծելու ու իմ սուրբ անունս անարգելու համար:
4 Եւ թէ որ ան մարդը իր սերունդէն Մողոքին տուած ատենը՝ ան երկրին ժողովուրդը չտեսնելու գալով՝
5 զանիկայ չմեռցընեն, Ան ատենը Ես իմ երեսս պիտի տնկեմ ան մարդուն վրայ՝ ու անոր ընտանիքին վրայ, և անիկայ՝ և Մողոքին հետ պոռնկութիւն ընելու համար ան մարդուն ետևէն բոլոր գացողները՝ իրենց ժողովուրդին մէջէն
6 պիտի կորսընցընեմ: Եւ վհուկներուն ու հմայողներուն ետևէն *երթալու դարձող մարդուն վրայ ալ երեսս պիտի տնկեմ, ու անիկայ իր ժողովուրդին մէջէն կորսըն-
7 ցընեմ: Ուստի սրբեցէ՛ք ձեր անձերը, ու սուրբ եղէք. ինչու որ
8 ես եմ Տէրը ձեր Աստուածը: Եւ իմ կանոններս պահեցէ՛ք, ու ըրէ՛ք զանոնք. Ես եմ Տէրը որ ձեզ կը սրբեմ:
9 Ով որ իր հայրը կամ իր մայրը անիծէ, անշուշտ պիտի մեռցուի. անիկայ իր հայրը կամ իր մայրը անիծեց, անոր արիւնը իր վրայ
10 ըլլայ: Եւ ով որ ուրիշ մարդու մը կնկանը հետ շնութիւն ընէ, իր դրացիին կնկանը հետ շնութիւն ընողը անշուշտ պիտի մեռցուի. շնացողն ալ շնացեալն ալ պէտք
11 մեռցուին: Եւ ով որ իր հօրը կնկանը հետ պառկի, իր հօրը մերկութիւնը բացած է. անշուշտ երկուքն ալ պիտի մեռցուին. անոնց
12 արիւնը իրենց վրայ ըլլայ: Եւ թէ որ մարդ մը իր հարսին հետ պառկի, անշուշտ երկուքն ալ պիտի մեռցուին. խառնակութիւն ըրին. անոնց արիւնը իրենց վրայ ըլլայ:
13 Եւ թէ որ մարդ մը՝ կնկան հետ պառկելու պէս արուի հետ պառկի, երկուքնին ալ պղծութիւն ըրին. անշուշտ պիտի մեռցուին. անոնց արիւնը իրենց վրայ ըլլայ:
14 Եւ թէ որ մարդ մը՝ կնիկ մը ու անոր մայրը առնէ, անօրէնութիւն է. ան ալ՝ անոնք ալ կրակով պիտի այրուին, որ ձեր մէջը անօրէ-
15 նութիւն չըլլայ: Եւ թէ որ մարդ մը անասունի հետ պառկի, անշուշտ պիտի մեռցուի, ու անասունը պիտի սպաննէք:
16 Եւ թէ որ կնիկ մը որ և իցէ անասունի հետ զուգաւորելու համար անոր մօտենայ, կնիկն ալ անասունն ալ պիտի սպաննես. անոնք անշուշտ պիտի մեռցուին. անոնց արիւնը իրենց
17 վրայ ըլլայ: Եւ թէ որ մարդ մը իր քոյրը առնէ՝ իր հօրը աղջիկը կամ իր մօրը աղջիկը, ու անոր մերկութիւնը տեսնէ, ու աղջիկն ալ անոր մերկութիւնը տեսնէ, չարութիւն է. անոնք իրենց ժողովուրդին աչքին առջևը պիտի կորսուին. անիկայ իր քրոջը մերկութիւնը բացաւ. իր անօրէնու-
18 թիւնը պիտի կրէ: Եւ թէ որ մարդ մը իր դաշտանին մէջ եղող կնկան մը հետ պառկի՝ ու անոր մերկութիւնը բանայ, ինքը անոր աղբիւրը բացաւ, ան կինն ալ իր արեանը աղբիւրը բացաւ. երկուքնին ալ իրենց ժողովուրդին մէ-
19 ջէն պիտի կորսուին: Եւ քու մօրդ քրոջը կամ քու հօրդ քրոջը մերկութիւնը պիտի չբանաս. ինչու որ եթէ մէկը իր ազգականին մերկութիւնը բանալու ըլլայ, երկուքն ալ իրենց անօրէնութիւնը
20 պիտի կրեն: Եւ թէ որ մարդ մը իր հօրեղբօրը կնկանը հետ պառկի, իր հօրեղբօրը մերկու-

Ն. Ք. Դ՟. 1490

ա Ել. իա. 13: Ղւ. իա. 8: Եզեկ. լէ. 28:
բ Ել. իա. 17: Բ Օր. իէ. 16: Առակ. ի. 20: Մատ. ժե. 4, 5:
գ Հռ 11, 12, 13, 16, 27: Բ Թագ. ա. 16:
դ Ղւ. ժը. 20: Բ Օր. իբ. 22: Յովհ. ը. 4, 5:
ե Ղւ. ժը. 8:
զ Ղւ. ժը. 15:
է Ղւ. ժը. 23:
ը Ղւ. ժը. 22: Բ Օր. իգ. 17: Տես Ծն. ժթ. 5: Դատ. ժթ. 22:
թ Ղւ. ժը. 17: Բ Օր. իէ. 23:
ժ Ղւ. ժը. 23: Բ Օր. իէ. 21:
ժա Ղւ. ժը. 9: Բ Օր. իէ. 22: Տես Ծն. ի. 12:
ժբ Ղւ. ժը. 19: Տես Ղւ. ժե. 24:
ժգ Ղւ. ժը. 12, 13:
ժդ Ղւ. ժը. 6:
ժե Ղւ. ժը. 14:

Ն․ Ք․ Ք․ 1490

ᵃԳլ․ ԺԸ․ 16։
ᵇԳլ․ ԺԸ․ 26։ ԺԹ․ 37։
ᶜԳլ․ ԺԸ․ 25, 28։
ᵈԳլ․ ԺԸ․ 3, 24, 30։
ᵉԳլ․ ԺԸ․ 27։ Բ Օր․ Թ․ 5։
ᶠԵլ․ Գ․ 17։ Զ․ 8։
ᵍՀմր 26։ Ել․ ԺԹ․ 5։ ԼԳ․ 16։ Բ Օր․ Է․ 6։ ԺԴ․ 2։ Գ Թագ․ Ը․ 53։
ʰԳլ․ ԺԱ․ 47։ Բ Օր․ ԺԴ․ 4։
ⁱԳլ․ ԺԱ․ 43։
ʲՀմր 7։ Գլ․ ԺԹ․ 2։ Ա Պետ․ Ա․ 16։
ᵏՀմր 24։ Տիտ․ Բ․ 14։
ˡԳլ․ ԺԹ․ 31։ Ել․ ԻԲ․ 18։ Բ Օր․ ԺԸ․ 10, 11։ Ա Թագ․ ԻԸ․ 7, 8։
ᵐՀմր 9։

թիւնը բացաւ․ անոնք իրենց մեղ֊
քը պիտի կրեն․ անզաւակ պիտի
21 մեռնին։ ᵃԵւ թէ որ մարդ մը իր
եղբօրը կնիկը առնէ, պղծութիւն
է ան․ անիկայ իր եղբօրը մերկու֊
թիւնը կը բանայ․ անզաւակ պիտի
ըլլան։
22 Ուստի ᵇիմ բոլոր կանոններս և
իմ բոլոր դատաստաններս պիտի
պահէք, ու ընէք անոնք, որ ան
երկիրը՝ ուր որ ձեզ պիտի տանիմ
հոն բնակելու՝ ᶜդուրս չփսխէ ձեզ։
23 ᵈԵւ պիտի չքալէք ան ազգերուն
սովորութիւններովը՝ որոնք ձեր
առջեւէն պիտի վռնտեմ․ քանզի
աս ամէն բաները ըրին անոնք, ᵉու
24 ես զզուեցայ անոնցմէ․ Եւ ᶠըսի
ձեզի․ Անոնց երկիրը դուք պիտի
ժառանգէք, ու ես անիկայ ձեզի
պիտի տամ ստացուածք ըլլալու,
երկիր մը՝ որ կաթ ու մեղր կը
բղխէ․ ես եմ Տէրը ձեր Աստուա֊
ծը՝ ᵍոր ձեզ ամէն ազգերէն զատեցի
25 ձեզ։ ʰՈւստի մաքուր ու անմա֊
քուր անասուններուն մէջտեղը՝ և
անմաքուր ու մաքուր թռչուննե֊
րուն մէջտեղը տարբերութիւն պի֊
տի ընէք․ ⁱև ձեր անձերը չպղծէք
անասուններով կամ թռչուննե֊
րով կամ գետնի վրայի բոլոր սո֊
ղուններով՝ որոնք ես արգիլեցի ձեզի
26 իբրև անմաքուր։ Եւ դուք սուրբ
պիտի ըլլաք ինծի․ ʲինչու որ ես
Տէրս սուրբ եմ, ու ᵏձեզ ուրիշ ազ֊
գերէն զատեցի՝ որ իմս ըլլաք։
27 ˡԱյհուկ կամ հմայող եղողը՝
թէ էրիկ մարդ ըլլայ և թէ կնիկ՝
անշուշտ պիտի մեռցուի․ քարե֊
րով քարկոծեն զանոնք․ ᵐանոնց
արիւնը իրենց վրայ ըլլայ։

## ԳԼ․ ԻԱ

1 Քահանաները իրենց ազգականին համար կրնային սուգ բռնել։ 6 Անոնք սուրբ պիտի ըլլային․ 8 ու սուրբ պիտի սեպուէին։ 7 Հասարակ քահանաներուն, 13 ու քահանայապետին ամուսնանալուն վրայով։ 17 Արատ ունեցող քահանային արգիլուած էր զոհ մատուցանելը։

ᵃԵզեկ․ ԽԴ․ 25։
ᵇՏես Եզեկ․ ԻԴ․ 16, 17։
ᶜԳլ․ ԺԹ․ 27, 28։ Բ Օր․ ԺԴ․ 1։ Եզեկ․ ԽԴ․ 20։

1 Եւ Տէրը ըսաւ Մովսէսին․ Խօսէ
Ահարոնին որդւոցը քահանա֊
ներուն, ու ըսէ անոնց․ ᵃՔահանայ
մը՝ մեռելի մը համար անմա֊
քուր պիտի չըլլայ իր ժողովուրդին
2 մէջը․ Բայց միայն իր մօտ ազգա֊
կանին համար, այսինքն՝ իր մօրը ու
իր հօրը և իր որդւոյն ու իր աղջկա֊
3 նը և իր եղբօրը համար․ Եւ իր կոյս
քրոջը համար որ մօտ է իրեն՝ ու
էրկան տրուած չէ, կրնայ անմա֊
4 քուր ըլլալ․ ᵇԱնիկայ իր ժողո֊
վուրդին մէջը գլխաւոր մարդ ըլ֊
լալով՝ անմաքուր պիտի չըլլայ՝ ինք֊
5 զինքը պղծելով։ ᶜԱնոնք գլուխ֊
նին փետելով՝ կնտակ պիտի չընեն,
և իրենց մօրուքին եզերքը պիտի
չածիլեն, ու իրենց մարմիննին վրայ
6 կտրածներ պիտի չընեն․ Սուրբ
պիտի ըլլան իրենց Աստուծոյն․ և
ᵈիրենց Աստուծոյն անունը չպղ֊
ծեն․ ինչու որ Տէրոջը պատարագ֊
ները ու իրենց Աստուծոյն հացը
անոնք կը մատուցանեն․ ուստի
7 սուրբ պիտի ըլլան։ ᵉՊոռնիկ կամ
պղծուած կնիկ պիտի չառնեն, և
ᶠիր էրիկէն արձակուած կնիկ մը
չառնեն․ ինչու որ քահանան սուրբ
8 է իր Աստուծոյն։ Ուստի պիտի
սրբես անիկայ․ ինչու որ քու Աս֊
տուծոյդ հացը անիկայ կը մատու֊
ցանէ․ անիկայ սուրբ պիտի ըլլայ
քեզի․ ᵍքանզի ես Տէրս՝ որ ձեզ
9 կը սրբեմ, սուրբ եմ։ ʰԵւ թէ
որ քահանայի մը աղջիկը պոռնկու֊
թիւն ընելով պղծուելու ըլլայ, իր
հայրը կը պղծէ․ անիկայ կրակով
պիտի այրուի։
10 ⁱԵւ իր եղբայրներէն մեծ եղող
քահանան՝ որուն գլխուն վրայ օծ֊
ման եղը թափուած է, ու ʲզգեստ֊
ները հագնելու օծուած, ᵏիր
գլուխը պիտի չբանայ, և իր լա֊
11 թերը պիտի չպատռէ, Եւ ˡմեռած
մարդու մը քով պիտի չերթայ․ ոչ
ալ իր հօրը կամ իր մօրը համար
12 անմաքուր պիտի ըլլայ․ ᵐԵւ
սրբարանէն դուրս պիտի չելլէ, ու
իր Աստուծոյն սրբարանը չպղծէ․
ինչու որ ⁿիր Աստուծոյն օծման
եղին պսակը իր վրան է․ ես եմ
13 Տէրը։ Եւ ᵒանիկայ կոյս մը իրեն
14 կնիկ պիտի առնէ․ Որբևարի՝ կամ
արձակուած՝ կամ պղծուած՝ կամ
բոզ պիտի չառնէ․ հապա կնիկ ըլ֊
լալու համար իր ժողովուրդէն կոյս
15 մը առնէ․ Որ իր սերմը չպղծէ իր
ժողովուրդին մէջը․ ինչու որ ᵖես
եմ Տէրը՝ որ կը սրբեմ զանիկայ։
16 Եւ Տէրը խօսեցաւ Մովսէսին՝
17 ըսելով․ Խօսէ Ահարոնին ու ըսէ․
Քու սերունդէդ իրենց ազգերուն
մէջ ով որ իր վրան արատ մը ունի,
ᵠթող չմօտենայ իր Աստուծոյն հա֊
18 ցը մատուցանելու․ Ինչու որ բնաւ
արատ ունեցող մարդ մը պիտի չը֊
մօտենայ․ կոյր մարդը՝ կաղը՝ կամ
կարճունչը՝ կամ *իր անդամներուն
մէջ աւելորդ բան մը ունեցողը՝,
19 Կամ ոտքը կոտրած՝ կամ ձեռքը
20 կոտրած մարդը, Կամ սապատողը՝
կամ թզուկը՝ կամ իր աչքին մէջ
բիծ ունեցողը՝ կամ քոսոտը՝ կամ
որքինոտը՝ կամ ʳ†փոշտանկը․
21 Ահարոն քահանային սերունդէն
արատ մը ունեցող մարդը՝ ˢՏէ֊
րոջը պատարագները մատուցանե֊
լու պիտի չմօտենայ․ քանզի արա֊

Ն․ Ք․ Ք․ 1490

ᵈԳլ․ ԺԸ․ 21։ ԺԹ․ 12։
ᵉԵզեկ․ ԽԴ․ 22։
ᶠՏես Բ Օր․ ԻԴ․ 1, 2։
ᵍԳլ․ Ի․ 7, 8։
ʰԾն․ ԼԸ․ 24։
ⁱԵլ․ ԻԹ․ 29, 30։ Գլ․ Ը․ 12։ ԺԶ․ 32։ Թիւ․ ԼԵ․ 25։
ʲԵլ․ ԻԸ․ 2։ Գլ․ ԺԶ․ 32։
ᵏԳլ․ Ժ․ 6։
ˡԹիւ․ ԺԹ․ 14։ Տես Հմր 1, 2։
ᵐԳլ․ Ժ․ 7։
ⁿԵլ․ ԻԸ․ 36։ Գլ․ Ը․ 9, 12, 30։
ᵒՀմր 7։ Եզեկ․ ԽԴ․ 22։
ᵖՀմր 8։
ᵠԳլ․ Ժ․ 3։ Թիւ․ ԺԶ․ 5։ Սաղ․ ԿԵ․ 4։
* Կամ՝ տկարանդամ
ʳԳլ․ ԻԲ․ 23։
ʳԲ Օր․ ԻԳ․ 1։
† Կամ՝ միորձին
ˢՀմր 6։

Ն. Ք. ԱԴ.
1490

ա Գլ. բ. 3, 10. գ. 27, 29. է. 1. իդ. 9. Թուոց. ժը. 9.
բ Գլ. իբ. 10, 11, 12. Թուոց. ժը. 19.
գ Հմր 12.

տաւոր ըլլալով իր Աստուծոյն հա-
ցը մատուցանելու պէտք չմօտե-
22 նայ : Անիկայ իր Աստուծոյն
հացը պիտի ուտէ, թէ ա ամենա-
սուրբ բաներէն և թէ բ սուրբ բա-
23 ներէն. Միայն վարագուրին մէջը
պիտի չմտնէ, և սեղանին չմօտե-
նայ, ինչու որ արատ ունի, ու
գ իմ սուրբ բաներս չպղծէ. քանզի
24 անոնք սրբող Տէրը ես եմ։ Եւ
Մովսէս խօսեցաւ այս բաները Ահա-
րոնին՝ ու անոր որդւոցը՝ և Իսրա-
յէլի բոլոր որդիներուն :

## ԳԼ. ԻԲ

1 Քահանայք իրենց անմաքրութեան ժամանակը՝ սուրբ բաներու մօտենալու չէին : 6 Իրենց մաքրուելուն վրայով : 10 Քահանային ընտանիքէն ով իրաւունք ունէր սուրբ բաներէն ուտելու : 17 Զոհ մատուցուելու անասունը անարատ ըլլալու էր : 26 Ութօրուան չեղած անասուն մը Տէրոջը պիտի չմատուցուէր : 29 Շնորհակալութեան զոհը ուտելուն պատուէրները :

ա Թուոց. զ. 3.
բ Գլ. ժը. 21.
գ Եւ. իբ. 38. Թուոց. ժը. 32. բ Օր. ժե. 19.
դ Գլ. է. 20.
ե Գլ. ժե. 2.
զ Գլ. ժդ. 2. ժե. 13.
է Թուոց. ժթ. 11, 22.
ը Գլ. ժե. 16.
թ Գլ. ժա. 24, 43, 44.
ժ Գլ. ժե. 7, 19.
ի Գլ. ժե. 5. Եբր. ժ. 22.
լ Գլ. իա. 22. Թուոց. ժը. 11, 13.
խ Եւ. իբ. 31. Գլ. ժէ. 15. Եզեկ. խդ. 31.
ծ Եւ. իը. 43. Թուոց. ժը. 22, 32.

1 Եւ Տէրը խօսեցաւ Մովսէսին՝ ըսե-
2 լով. Խօսէ Ահարոնին ու անոր
որդւոցը՝ որ Իսրայէլի որդւոցը ա մա-
տուցած սուրբ բաներէն զգոյշ կե-
նան, և բ իմ սուրբ անունս չպղծեն
այն բաներով՝ որ գ ինծի կը սրբեն.
3 ես եմ Տէրը : Ըսէ անոնց. Ձեր
բոլոր սերունդէն ձեր ազգերուն
մէջ՝ ով որ դ իր անմաքրութիւնը
իր վրան ունենալով մօտենայ այն
սուրբ բաներուն՝ որ Իսրայէլի որ-
դիքը կը սրբեն Տէրոջը, այն անձը
իմ առջեւէս պիտի կորսուի. ես
4 եմ Տէրը։ Ով որ Ահարոնին ցեղէն
բորոտ ըլլայ, կամ ե ծորում ու-
նենայ սուրբ բաներէն պիտի չու-
տէ՝ զ մինչև իր մաքրուիլը. և է ով
որ մեռելէ պղծուած բանի մը դպչի,
կամ ը մարդ մը՝ որուն զուգա-
ւորութեան սերմը իրմէն ելած է,
5 կամ թ ով որ դպչի որ և իցէ սո-
ղունի մը՝ որով կրնայ անմաքուր
ըլլալ, կամ ժ մարդու մը՝ որմէն
կրնայ անմաքուր ըլլալ, որ և իցէ
անմաքրութիւն որ անիկայ ունե-
6 նայ. Անոնց դպչող մարդը մինչև
իրիկուն անմաքուր պիտի ըլլայ, և
սուրբ բաներէն պիտի չուտէ, հա-
պա ի իր մարմինը ջրով պիտի լուայ.
7 Եւ երբ արեգակը մարը մտնէ, մա-
քուր պիտի ըլլայ, ու ետքը սուրբ
բաներէն ուտէ. ինչու որ լ ան իր
8 հացն է : խ Անիկայ մեռած կամ
գազանաբեկ պիտի չուտէ, որ ա-
9 նով չպղծուի. ես եմ Տէրը : Եւ
իմ կարգադրութիւնս պիտի պա-
հեն, ծ որ անոր համար մեղք չկը-
րեն, ու անով պղծելնուն համար չը-
մեռնին. ես եմ Տէրը՝ որ զանոնք
կը սրբեմ :

10 կ Բնաւ օտարական մը սուրբ բանէ
պիտի չուտէ. քահանային հիւրը
կամ վարձկանը սուրբ բանէ պիտի
11 չուտէ : Բայց քահանային իր ըս-
տակովը ծախու առած անձը՝ ու իր
տունը ծնածը՝ անկէ պիտի ուտէ.
հ անոնք անոր կերակուրէն պիտի
12 ուտեն : Թէ որ քահանային աղ-
ջիկը օտարականի մը հետ ամուս-
նանայ, անիկայ նուիրուած սուրբ
13 բաներէն պիտի չուտէ : Բայց թէ
որ քահանային աղջիկը որբևարի
կամ արձակուած ըլլայ՝ ու զաւակ
չունենայ, ձ և իր հօրը տունը դառ-
նայ, ու տեղը ղ իր աղջկութեանը
ժամանակին պէս՝ իր հօրը հացէն
պիտի ուտէ. սակայն բնաւ օտա-
րական մը անկէ պիտի չուտէ :
14 ճ Եւ թէ որ մարդ մը անգիտու-
թեամբ սուրբ բանէ մը ուտէ, ա-
նոր վրայ հինգերորդ մաս մը պիտի
աւելցնէ, ու սուրբ բանովը մէկ-
15 տեղ քահանային պիտի տայ : Եւ
Իսրայէլի որդւոցը Տէրոջը մատու-
ցած մ սուրբ բաները պիտի չպըղ-
16 ծեն. * Ու իրենց սուրբ բաները ու-
տելով յ յանցանաց անօրէնու-
թիւնը իրենց վրայ չբերեն". ինչու
որ ես եմ Տէրը՝ որ զանոնք կը
սրբեմ :
17 Եւ Տէրը խօսեցաւ Մովսէսին՝ ը-
18 սելով. Խօսէ Ահարոնին՝ ու անոր
որդւոցը՝ և Իսրայէլի բոլոր որդւո-
ցը, ու ըսէ անոնց. ն Իսրայէլի
տունէն՝ կամ Իսրայէլի մէջ բնակող
օտարականներէն՝ ողջակէզի համար
Տէրոջը անոնց մատուցածը՝ իրենց
բոլոր ուխտերուն և բոլոր կամաւոր
ընծաներուն համար, իր զոհը մա-
19 տուցանող ամէն մարդը, շ Արջառ-
ներէն՝ ոչխարներէն՝ կամ այծերէն՝
անարատ արու մը պէտք է մատուցանէ, որ
ձեզի համար ընդունելի ըլլայ :
20 ո Բնաւ արատ մը ունեցողը պիտի
չմատուցանէք. ինչու որ ձեզի հա-
21 մար ընդունելի չըլլար : Եւ չ ուխտ
կատարելու համար՝ կամ կամաւոր
ընծայի համար՝ պ ով որ արջառ-
ներէն կամ ոչխարներէն Տէրոջը
խաղաղութեան զոհ մատուցանե-
լու ըլլայ, անարատ պիտի ըլլայ ան,
որ ընդունուի. բնաւ արատ պիտի
22 չըլլայ անոր վրայ : ջ Կոյր՝ կամ մէկ
մը կոտրած՝ կամ կտրուած՝
կամ խաղաւարտ ունեցող՝ կամ
քոսոտ՝ կամ որքինոտ եղածնե-
րէն Տէրոջը պիտի չմատուցանէք,
ո՛չ ալ ռ անոնցմէ Տէրոջը պատա-
րագի համար սեղանին վրայ պիտի
23 դնէք : Բայց անդամներուն մէջ
ս աւելորդութիւն կամ պակասու-
թիւն ունեցող զուարակը՝ կամ
ոչխարը՝ կամաւոր ընծայի համար

Ն. Ք. ԱԴ.
1490

կ Տես ա Թագ. իա. 6.
հ Թուոց. ժը. 11, 13.
ձ Ծն. լը. 11.
ղ Գլ. ժ. 14. Թուոց. ժը. 11, 19.
ճ Գլ. ե. 15, 16.
մ Թուոց. ժը. 32.
* Կամ՝ Ու [illegible] անոնց վրայ յանցանաց անօրէնութիւնը չբերեն՝ երբոր անոնք իրենց սուրբ բաները ուտեն.
յ Հմր 9.
ն Գլ. ա. 2, 3, 10. Թուոց. ժե. 14.
շ Գլ. ա. 3.
ո բ Օր. ժե. 21. ժէ. 1. Մաղ. ա. 8. 14. Եփե. ե. 27. Եբր. թ. 14. ա Պետ. ա. 19.
չ Գլ. է. 16. Թուոց. ժե. 3, 8. բ Օր. իգ. 21, 23. Սաղ. կբ. 8. կե. 1. Ժող. ե. 4, 5.
պ Գլ. գ. 1, 6.
ջ Հմր 20. Մաղ. ա. 8.
ռ Գլ. ա. 9, 13. գ. 3, 5.
ս Գլ. իա. 18.

մատուցանես . սակայն ուխտի հա-
24 մար պիտի չընդունուի ան ։ Իր
ամորձիքը ճմլուածը՝ կամ ճզմուա-
ծը՝ կամ փրցուածը՝ կամ կտրուա-
ծը՝ պիտի չմատուցանէք Տէրոջը ,
և ձեր երկրին մէջ պիտի չընէք անանկ
25 բաները ։ Նաև օտարականի մը ձեռ-
քէն ալ՝ ամէն ասոնցմէ ձեր Աս-
տուծոյն պատարագ պիտի չմատու-
ցանէք . ինչու որ անոնց մէջ
խեղութիւն ու արատ կայ . ա-
նոնք ձեզի համար ընդունելի պիտի
չըլլան ։
26 Եւ Տէրը խօսեցաւ Մովսէսին՝
27 ըսելով . Երբոր զուարակ կամ
ոչխար կամ այծ ծնանի , եօթը օր
իր մօրը քով պիտի մնայ . և ութե-
րորդ օրը՝ ու անկէ ետքը Տէրոջը
ընդունելի պիտի ըլլայ պատարագի
28 ընծայի համար ։ Եւ կովը կամ
ոչխարը իր ձագովը մէկտեղ մէկ
օրուան մէջ պիտի չմորթէք ։
29 Եւ երբոր գոհութեան զոհ մա-
տուցանէք Տէրոջը , անանկ պիտի
մատուցանէք , որ ձեզի համար ըն-
30 դունելի ըլլայ . Նոյն օրը պիտի ու-
տուի անիկայ . անկէ մինչև առ-
տու պիտի չթողուք . ես եմ Տէրը ։
31 Ուստի իմ պատուիրանքներս
պիտի պահէք , և պիտի ընէք ա-
32 նոնք . ես եմ Տէրը ։ Եւ իմ սուրբ
անունս պիտի չպղծէք ; որ ես
սրբուիմ Իսրայէլի որդւոց մէջը .
ես եմ Տէրը որ ձեզ կը սրբեմ .
33 Որ ձեզի Աստուած ըլլալու համար՝
ձեզ Եգիպտոսի երկրէն հանեցի .
ես եմ Տէրը ։

Ն. Ք. ԳՔ. 1490
Հ Թու. ԺԵ. 15, 16 ։ Գղ. ԻԱ. 6, 17 ։ Մաղ. Ա. 14 ։
Ել. ԻԲ. 30 ։
Բ Օր. ԻԲ. 6 ։
Գղ. Է. 12 ։ Սաղ. ՃԷ. 22 ։ ՃԺԶ. 17 ։ Ամով. Դ. 5 ։
Գղ. Է. 15 ։
Գղ. ԺԹ. 37 ։ Թու. ԺԵ. 40 ։ Բ Օր. Դ. 40 ։
Գղ. ԺԸ. 21 ։
Գղ. Ժ. 3 ։ Մատ. Զ. 9 ։ Ղու. ԺԱ. 2 ։
Գղ. Ի. 8 ։
Ել. Դ. 7 ։ Գղ. ԺԱ. 45 ։ ԺԹ. 36 ։ ԻԵ. 38 ։ Թու. ԺԵ. 41 ։

## ԳԼ. ԻԳ

1 Տէրոջը տօները . 3 շաբաթը , 4 և զատիկը , 9 երախայրիներուն , 15 ու Պենտեկոստէին տօնը արտօնելու վրայով ։ 22 Հունձքէն մնացած հասկերը ու այգիէն ճիւղերը չժողվելու պատուէրը ։ 23 Փող հնչեցընելու տօնը ։ 26 Քաւութեան օրը ։ 33 Տաղաւարահարաց տօնը ։

1 Եւ Տէրը խօսեցաւ Մովսէսին՝ ըսե-
2 լով . Խօսէ Իսրայէլի որդւոցը՝
ու ըսէ անոնց . Տէրոջը տօները՝
որ դուք սուրբ ժողով պիտի
կոչէք , իմ տօներս ասոնք են .
3 Վեց օր գործ գործուի , բայց
եօթներորդ օրը հանգստութեան
շաբաթը ըլլալով՝ սուրբ ժողով է .
բնաւ գործ պիտի չգործէք . Տէ-
րոջը շաբաթը պիտի ըլլայ ձեր բոլոր
բնակութեանցը մէջ ։
4 Տէրոջը տօները՝ որ իրենց ատե-
նին համեմատ սուրբ ժողովներ պի-
5 տի քարոզէք , ասոնք են ։ Առա-
ջին ամսուն չորեքտասաներորդ օրը
իրիկուան դէմ՝ Տէրոջը զատիկն է .
6 Եւ նոյն ամսուն հնգետասաներորդ
օրը բաղարջակերաց տօն է Տէրոջը .
եօթը օր բաղարջ պիտի ուտէք ։

Հմր 4. 37 ։
Ել. ԼԲ. 5 ։ Դ Թագ. Ժ. 20 ։ Սաղ. ՁԱ. 3 ։
Ել. Ի. 9 ։ ԻԳ. 12 ։ ԼԱ. 15 ։ ԼԴ. 21 ։ Գղ. ԺԹ. 3 ։ Բ Օր. Ե. 13 ։ Ղու. ԺԳ. 14 ։
Հմր 2. 37 ։ Ել. ԻԳ. 14 ։
Ել. ԺԲ. 6, 14, 18 ։ ԺԳ. 3, 10 ։ ԻԳ. 15 ։ ԼԴ. 18 ։ Թու. Թ. 2, 3 ։ ԻԸ. 16, 17 ։ Բ Օր. ԺԶ. 1—8 ։ Յես. Ե. 10 ։

7 Առաջին օրը սուրբ ժողով պիտի
ունենաք . բնաւ ծառայութեան
8 գործ պիտի չգործէք ։ Եւ եօթը օր
պատարագ պիտի մատուցանէք
Տէրոջը . եօթներորդ օրը սուրբ
ժողով պիտի ըլլայ . բնաւ ծառա-
յութեան գործ պիտի չգործէք ։
9 Եւ Տէրը խօսեցաւ Մովսէսին՝ ը-
10 սելով . Խօսէ Իսրայէլի որդւոցը՝ ու
ըսէ՛ անոնց . Երբոր մտնէք այն եր-
կիրը որ ձեզի կու տամ , ու անոր
հունձքը հնձէք , ձեր հունձքին ե-
րախայրի որան քահանային պիտի
11 բերէք . Ան ալ Տէրոջը առջևը ե-
րերցընելով՝ պիտի մատուցանէ ո-
րան , որ ձեզի համար ընդունելի ըլ-
լայ . քահանան շաբաթին հետևեալ
12 օրը պիտի մատուցանէ զայն ։ Եւ ո-
րան մատուցած օրերնիդ՝ ողջակէզի
համար մէկ տարեկան անարատ գառ
մը պիտի մատուցանէք Տէրոջը .
13 Եւ անոր հացի ընծան եղով շա-
ղուած երկու տասանորդ բարակ
ալիւր պիտի ըլլայ . անոյշ անու-
շահոտ պատարագի համար է Տէ-
րոջը . և անոր թափելու նուէրը
հիմնին չորրորդ մասը գինի պիտի
14 ըլլայ ։ Եւ մինչև այն օրը՝ որ ձեր
Աստուծոյն ընծան կը մատուցա-
նէք , հաց՝ կամ բոհրած ցորեն՝
կամ թարմ հասկեր պիտի չուտէք .
ձեր ազգերուն մէջ ձեր բոլոր բնա-
կարաններուն մէջ այս յաւի-
տենական կանոն պիտի ըլլայ ։
15 Եւ շաբաթին հետևեալ օրէն որ
դուք նուիրման որան բերիք , լման
եօթը շաբաթ պիտի համրէք ձե-
16 զի . Մինչև եօթներորդ շաբաթին
հետևեալ օրը Յիսուն օր պիտի
համրէք , և Նոր հացի ընծայ մա-
17 տուցանէք Տէրոջը ։ Ձեր բնակա-
րաններէն երերցընելու ընծայի հա-
մար՝ երկու հաց պիտի բերէք , որ
անոնք երկու տասանորդ բարակ ա-
լիւրէ ըլլալով՝ խմորեալ եփած պի-
տի ըլլան . ասոնք երախայրի է Տէրո-
18 ջը ։ Եւ հացերուն հետ՝ մէկ տա-
րեկան եօթը հատ անարատ գա-
ռինք՝ և արջառներէն մէկ զուարակ
մը՝ ու երկու խոյ պիտի մատուցա-
նէք Տէրոջը . ասոնք հացի ընծա-
ներուն ու թափելու նուէրներուն
հետ ողջակէզ անուշահոտ պա-
19 տարագ պիտի ըլլան Տէրոջը ։ Եւ
մեղքի պատարագի համար այծե-
րէն մէկ նոխազ՝ և խաղաղութեան
զոհի համար մէկ տարեկան երկու
20 գառինք պիտի մատուցանէք ։ Եւ
քահանան երախայրի հացին հետ
երերցընելու ընծայի համար՝ երկու
գառները պիտի մատուցանէ Տէ-
րոջը առջևը . անոնք սուրբ պիտի
ըլլան Տէրոջը , և քահանային ըլ-

Ն. Ք. ԳՔ. 1490
Ել. ԺԲ. 16 ։ Թու. ԻԸ. 18, 25 ։
Ել. ԻԳ. 16, 19 ։ ԼԴ. 22, 26 ։ Թու. ԺԵ. 2, 18 ։ ԻԸ. 26 ։ Բ Օր. ԺԶ. 9 ։ Յես. Գ. 15 ։
Հռով. ԺԱ. 16 ։ Ա Կոր. ԺԵ. 20 ։ Յակ. Ա. 18 ։ Յայտ. ԺԴ. 4 ։
Ել. ԻԹ. 24 ։
Գղ. Բ. 14, 15, 16 ։
Գղ. ԻԵ. 8 ։ Ել. ԼԴ. 22 ։ Բ Օր. ԺԶ. 9 ։
Ա Կոր. Բ. 1 ։
Թու. ԻԸ. 26 ։
Ել. ԻԳ. 16, 19 ։ ԼԴ. 22, 26 ։ Թու. ԺԵ. 17, 20 ։ ԻԸ. 26 ։ Բ Օր. ԻԶ. 1, 10 ։
Գղ. Դ. 23, 28 ։ Թու. ԻԸ. 30 ։
Գղ. Գ. 1 ։
Թու. ԺԸ. 12 ։ Բ Օր. ԺԸ. 4 ։

Ն. Ք. ԳՔ.
1490

21 լոյ ։ Եւ այն նոյն օրը պիտի քա-
րոզէք որ ձեզի սուրբ ժողով ըլլայ .
բնաւ ծառայութեան գործ պիտի
չգործէք . աս՝ ձեզի յաւիտենական
կանոն ըլլայ ձեր բոլոր բնակարան-
ներուն մէջը ձեր ազգերուն մէջ ։
22 Եւ՝ ղերբոր ձեր երկրին հունձքը
հնձէք , հնձած ատենդ արտին եզեր-
քը լման պիտի չհնձես , ևու հունձ-
քիդ մնացած հասկերը չժողվես .
զանոնք աղքատին ու օտարականին
պիտի թողուս . ես եմ Տէրը ձեր
Աստուածը ։
23 Եւ Տէրը խօսեցաւ Մովսէսին՝ ը-
24 սելով . Խօսէ Իսրայէլի որդւոցը՝
ու ըսէ . ժԵօթներորդ ամսուն մէջ՝
ամսուն առաջին օրը ձեզի հանգըս-
տութեան օր՝ ծփող հնչեցնելուն
յիշատակը՝ սուրբ ժողով պիտի ըլ-
25 լայ ։ Բնաւ ծառայութեան գործ
պիտի չգործէք , հապա պատարագ
մատուցանէք Տէրոջը ։
26 Եւ Տէրը խօսեցաւ Մովսէսին՝ ը-
27 սելով . ՆՆաև աս եօթներորդ ամ-
սուն տասներորդ օրը քաւութեան
օրը ըլլալով՝ սուրբ ժողով ըլլայ
ձեզի . և պիտի խոնարհեցընէք ձեր
հոգիները , ու պատարագ մատու-
28 ցանէք Տէրոջը ։ Եւ այն օրը բնաւ
գործ պիտի չգործէք . ինչու որ Տէ-
րոջը ձեր Աստուծոյն առջևը ձեզի
համար քաւութիւն ընելու՝ օր քա-
29 ւութեան է ։ Քանզի ով որ նոյն
օրը չխոնարհի՝ ևիր ժողովուրդին
30 մէջէն պիտի կորսուի . Եւ ով որ
նոյն օրը գործ մը գործէ , այն անձը
ոիր ժողովուրդին մէջէն պիտի կոր-
31 սընցընեմ ։ Բնաւ գործ մը պիտի
չգործէք . աս ձեր ազգերուն
մէջ ձեր բոլոր բնակարաններուն
մէջ յաւիտենական կանոն ըլլայ ։
32 Աս ձեզի հանգստութեան շաբաթ
պիտի ըլլայ , և ձեր հոգիները պի-
տի խոնարհեցընէք , ամսուն իններ-
րորդ օրուան իրիկունը ձեր շաբաթը
պիտի պահէք՝ մէկ իրիկունէն մինչև
մէկալ իրիկունը ։
33 Եւ Տէրը խօսեցաւ Մովսէսին՝ ը-
34 սելով . Խօսէ Իսրայէլի որդւոցը՝
ու ըսէ . ևԱս եօթներորդ ամսուն
հնգետասաներորդ օրը՝ եօթը օր տա-
35 ղաւարահարաց տօն է Տէրոջը ։ Ա-
ռաջին օրը սուրբ ժողով պիտի ըլլայ .
բնաւ ծառայութեան գործ պիտի
36 չգործէք . Եօթը օր պատարագ պի-
տի մատուցանէք Տէրոջը . ևՈւ-
թերորդ օրը սուրբ ժողով պիտի
ըլլայ ձեզի , և պատարագ մատու-
ցանէք Տէրոջը . Հանդիսաժողովութեան
օր է այն բնաւ ծառայութեան
37 գործ պիտի չգործէք ։ ՟Տէրոջը
պատարագ՝ ողջակէզ՝ ու հացի ըն-
ծայ՝ զոհ՝ և թափելու նուէրներ՝
ամէն օրուան պէտք եղածը մատու-
ցանելու համար ձեր սուրբ ժողով
կոչելու Տէրոջը տօները ասոնք են ,
38 ՟Տէրոջը շաբաթներէն զատ՝ և ձեր
ընծաներէն զատ՝ ու ձեր բոլոր
ուխտերէն զատ՝ և ձեր բոլոր Տէ-
րոջը տալու կամաւոր ընծաներէն
39 զատ ։ Նաև եօթներորդ ամսուն
հնգետասաներորդ օրը՝ երկրի ար-
դիւնքը ժողված ատեննիդ եօթը օր
տօն պիտի պահէք Տէրոջը . ա-
ռաջին օրը շաբաթ և ութերորդ
40 օրը շաբաթ պիտի ըլլայ ։ Եւ ա-
ռաջին օրը ձեզի գեղեցիկ ծառերու
պտուղ , արմաւենիի ոստեր՝ ու
տերևախիտ ծառերու ոստեր՝ և
ձորէն ուռիներու ոստեր պիտի առ-
նէք , ու Տէրոջը ձեր Աստուծոյն
առջևը եօթը օր ուրախանաք ։
41 Եւ աս տօնը տարին եօթը օր պի-
տի պահէք Տէրոջը . ձեր ազգերուն
մէջ յաւիտենական կանոն ըլլայ
այն . եօթներորդ ամսուն մէջ պի-
42 տի ընէք այն ։ ՟Եօթը օր տաղա-
ւարներու մէջ պիտի բնակիք .
Իսրայէլի բոլոր բնակները տաղա-
43 ւարներու մէջ բնակին . ԺՈրպէս
զի ձեր սերունդները գիտնան՝ թէ
Իսրայէլի որդիքը Եգիպտոսէ երկ-
րէն հանած ատենս՝ տաղաւարնե-
րու մէջ բնակեցուցի զանոնք . ես
44 եմ Տէրը ձեր Աստուածը ։ Եւ
Մովսէս Իսրայէլի որդւոցը պատ-
մեց Տէրոջը տօները ։

Ն. Ք. ԳՔ.
1490

ղ Գլ. ժԹ. 9 .
ե Բ Օր. իդ. 19 ։
ժ Թու. իԹ. 1 .
ջ Գլ. իե. 9 ։
ի Գլ. ժզ. 30 ։ Թու. իԹ. 7 ։
ւ Ծն. ժէ. 14 ։
ռ Գլ. ի. 3 , 5 , 6 ։
չ Եւ. իգ. 16 ։ Թու. իԹ. 12 ։ Բ Օր. ժզ. 13 ։ Եզր. գ. 4 ։ Նեեմ. ը. 14 ։ Զաք. ժդ. 16 ։ Յոհ. է. 2 ։
պ Թու. իԹ. 35 ։ Նեեմ. ը. 18 ։ Յոհ. է. 37 ։
ջ Բ Օր. ժզ. 8 ։ Բ Մն. է. 9 ։ Նեեմ. ը. 18 ։ Յովէլ. ա. 14 ։ բ. 15 ։
ռ Հմր 2 , 4 ։
ս Թու. իԹ. 39 ։
վ Եւ. իգ. 16 ։ Բ Օր. ժզ. 13 ։
տ Նեեմ. ը. 15 ։
ր Բ Օր. ժզ. 14 , 15 ։
ց Թու. իԹ. 12 ։ Նեեմ. ը. 18 ։
ւ Նեեմ. ը. 14 , 15 , 16 ։
փ Բ Օր. լա. 13 ։ Սաղ. հը. 5 , 6 ։
ք Հմր 2 ։

ԳԼ. ԻԴ

1 Ճրագներուն համար եղը ։ 5 Առաջաւորու-
թեան հացը ։ 10 Իսրայէլացի կնկանը տղան՝
որ Տէրոջը անունը հայհոյեց ։ 13 Հայհոյու-
թեան , 17 ու մարդասպանութեան պատիժը ։
18 Վնասներու վրայով ։ 23 Այն հայհոյիչին
քարկոծուիլը ։

1 Եւ Տէրը խօսեցաւ Մովսէսին՝ ը-
2 սելով . ՟Պատուիրէ Իսրայէլի
որդւոցը՝ որ ծեծուած մաքուր ձէթ
բերեն քեզի լոյսի համար , որ միշտ
3 ճրագ վառի ։ Ժողովքի խորանին
մէջ՝ վկայութեանը վարագուրին
դուրսի դին Ահարոն միշտ պիտի
պատրաստէ զայն՝ իրիկունէ մինչև
առտու Տէրոջը առջևը ։ Ասիկա
4 յաւիտենական կանոն ըլլայ ձեր ազգերուն մէջ
յաւիտենական կանոն ըլլայ ։ Ճը-
րագները բմաքուր աշտանակին վը-
րայ Տէրոջը առջևը միշտ պիտի
պատրաստէ ։
5 Եւ բարակ ալիւր պիտի առնես ,
ու անով տասներկու գշօթ եփես .
ամէն մէկ շօթը երկու տասանորդէն
6 պիտի ըլլայ ։ Եւ զանոնք Տէրոջը
առջևը դմաքուր սեղանին վրայ՝
երկու կարգով պիտի դնես . ամէն
7 մէկ կարգը վեց վեց հատ ըլլայ ։ Եւ

ա Եւ. իէ. 20 , 21 ։
բ Եւ. լա. 8 ։ լԹ. 37 ։
գ Եւ. իե. 30 ։
դ Թագ. է. 48 ։ Բ Մն. դ. 19 ։ ժգ. 11 ։ Եբր. Թ. 2 ։

Ն · Ք · ՎՔ ·
1490

ե Թուօ · դ · 7 ։ ա Մն · Թ · 32 ։ բ Մն · բ · 4 ։
զ ա Թագ · իա · 6 ։ Մատ · ժբ · 4 ։ Մար · բ · 26 ։ Ղու · զ · 4 ։
է Եւ · իԹ · 33 ։ Գւ · ը · 3 ։ իա · 22 ։
ը Հմր 16 ։
Թ Յոբ · ա · 5 · 11 · 22 ։ բ · 5 · 9 · 10 ։ Ես · ը · 21 ։
Ժ Եւ · ժբ · 22 · 26 ։
Ի Թու · ժե · 34 ։
Լ Եւ · ժր · 15 · 16 ։ Թու · իէ · 5 ։ Լզ · 5 · 6 ։
Խ բ Օր · ժգ · 9 ։ ժէ · 7 ։
Ծ Գւ · ե · 1 ։ ի · 17 ։ Թու · Թ · 13 ։
Կ գ Թագ · իա · 10 · 13 ։ Սաղ · Հդ · 10 ։ 18 ։ Մատ · ժբ · 31 ։ Մար · գ · 28 ։ Յակ · բ · 7 ։
Հ Եւ · իա · 12 ։ Թու · լե · 31 ։ բ Օր · ժԹ · 11 · 12 ։
Ձ Հմր 21 ։
Ղ Եւ · իա · 24 ։ բ Օր · ժԹ · 21 ։ Մատ · ե · 38 ։ է · 2 ։
Ճ Եւ · իա · 33 ։ Հմր 18 ։
Մ Հմր 17 ։
Յ Եւ · ժբ · 49 ։ Գւ · ժԹ · 34 ։ Թու · ժե · 16 ։
Ն Հմր 14 ։

տՃն կարգին վրայ զուտ կնդրուկ
պիտի դնես , որ հացին վրայ պա-
տարագի յիշատակ ըլլայ Տէրոջը ։
8 Իսրայէլի որդւոցը կողմանէ յաւի-
տենական կանոնով ե ամէն շաբաԹ
օր միշտ Տէրոջը առջեւը զանիկայ
9 պիտի կարգադրէ ։ Եւ զանիկայ
Ահարոնին ու անոր որդւոցը պիտի
ըլլայ , Է ու սուրբ տեղը ուտեն
զանիկայ . ինչու որ ան՝ Տէրոջը
պատարագներէն յաւիտենական
կանոնով ամենասուրբ է անոր ։
10 Եւ Իսրայէլի որդւոցը մէջ Իս-
րայէլացի կնկան մը որդին ելաւ ,
որուն հայրը Եգիպտացի էր . ու
ան Իսրայէլացի կնկանը որդին՝ Իս-
րայէլացի մարդու մը հետ բանակին
11 մէջ կռուեցաւ . Եւ ան Իսրայէլա-
ցի կնկանը որդին ըՀայհոյեց Տէրոջը
անունը՝ ու Թ անիծեց . և ԺՄովսէ-
սին բերին անիկայ . ու անոր մօրը
անունը Սաղոմիթ էր , Դանի ցե-
12 ղէն՝ Դաբրիին աղջիկը ։ Եւ Իբան-
տարկեցին զանիկայ , Լմինչև որ
Տէրոջը հրամանը յայտնուի իրենց ։
13 Եւ Տէրը խօսեցաւ Մովսէսին՝ ըսե-
14 լով . Ան հայհոյող մարդը բանա-
կէն դուրս հանէ , և բոլոր լսողները
Խ ձեռքերնին անոր գլխուն վրայ
դնեն , ու բոլոր ժողովքը քարկո-
15 ծեն զանիկայ ։ Եւ պիտի խօսիս
Իսրայէլի որդւոցը՝ ըսելով . Ով
որ իր Աստուածը կ'անիծէ , Ծ իր
16 մեղքը պիտի կրէ ։ Եւ Տէրոջը ա-
նունը Կհայհոյողը անշուշտ պիտի
մեռցուի . բոլոր ժողովքը անշուշտ
պիտի քարկոծեն զանիկայ , Թէ
օտարական ըլլայ՝ և Թէ երկրացի .
Տէրոջը անունը հայհոյողը պիտի
մեռցուի ։
17 Հ Եւ ան որ մարդ մը կը սպաննէ ,
18 անշուշտ պիտի մեռցուի ։ Ձ Եւ ան
որ անասուն մը կը մեռցընէ , անա-
սունի տեղ անասուն պիտի հատու-
19 ցանէ . Եւ Թէ որ մարդ մը իր դը-
րացիին խեղութեանը պատճառ ըլ-
լայ , Ղ իր ըրածին պէս պիտի ընեն
20 իրեն . Բեկման տեղ՝ բեկում , աչ-
քի տեղ՝ աչք , ակռայի տեղ՝ ակ-
ռայ , ինչպէս որ անիկայ մարդու
մը խեղութիւն պատճառեր է , ա-
21 նանկ ալ պիտի ըլլայ իրեն ։ Ճ Եւ
անասուն մեռցընողը՝ պիտի հա-
տուցանէ ան . Մ բայց մարդ մեռ-
22 ցընողը՝ պիտի մեռցուի ։ Յ Թէ
օտարականին համար՝ և Թէ երկ-
րացիին համար՝ ձեր օրէնքը մէկ
պիտի ըլլայ . ինչու որ ես եմ Տէրը
ձեր Աստուածը ։
23 Եւ Մովսէս խօսեցաւ Իսրայէլի
որդւոցը՝ Ն որ ան անիծող մարդը
բանակէն դուրս հանեն , և քարե-
րով քարկոծեն զանիկայ . ու Իս-
րայէլի որդիքը Տէրոջը Մովսէսին
պատուիրածին պէս ըրին ։

## ԳԼ · ԻԵ

1 ԵօԹներորդ տարւոյն շաբաԹը ։ 8 Յիսուներորդ տարին Յոբելեան պիտի կոչուէր ։ 14 Զրկանքի վրայով ։ 18 Հնազանդութեան օրհնութիւնը ։ 23 Երկրին , 29 և տուներուն փրկանքը ։ 35 Տնանկներուն վրայ գուԹ ունենալու պատուէրը ։ 39 Ծառաներու համար կանոններ ։ 47 Ծառաներուն փրկուելուն վրայով ։

1 Եւ Տէրը խօսեցաւ Մովսէսին Սի-
2 նայ լեռը՝ ըսելով . Խօսէ Իս-
րայէլի որդւոցը՝ ու ըսէ անոնց .
Երբոր ան երկիրը մտնէք՝ որն որ ես
ձեզի պիտի տամ , ան երկիրը Թող
Ա հանգստութեան շաբաԹ մը պա-
3 հէ Տէրոջը ։ Վեց տարի քու արտդ
պիտի ցանես , և քու այգիդ վեց
տարի յօտես , ու անոր արդիւնքը
4 ժողվես . Բայց եօԹներորդ տարին
երկրին համար հանգստութեան
շաբաԹ , այսինքն՝ Տէրոջը համար
շաբաԹ ըլլայ . քու արտդ պիտի
չցանես , և քու այգիդ չյօտես .
5 Բ Քու *արտիդ ինքիրմէ բուսածը
պիտի չհնձես և քու չյօտած այ-
գիիդ խաղողները չժողվես . հան-
գստութեան տարի ըլլայ ան երկ-
6 րին ։ Եւ երկրին շաբաԹը ձեզի
կերակուր պիտի ըլլայ , քեզի և քու
ծառայիդ և քու աղախինիդ ու
քու վարձկանիդ՝ և քու քովդ
7 պանդխտացած օտարականիդ . Եւ
քու անասուններուդ ու քու երկ-
րիդ մէջ եղած կենդանիներուն
կերակուր ըլլայ անոր բոլոր ար-
դիւնքը ։
8 Եւ դուն քեզի տարիներու եօԹը
շաբաԹ պիտի համրես , այսինքն եօ-
Թը անգամ եօԹը տարի . ու տա-
րիներուն եօԹը շաբաԹներուն ժա-
մանակը՝ քառասունըինը տարի պի-
9 տի ըլլան քեզի ։ Եւ եօԹներորդ
ամսուն տասներորդ օրը՝ աղաւա-
րութեան փողը պիտի հնչեցընես ,
Գ քաւութեան օրը ձեր բոլոր երկրին
10 մէջ պիտի հնչեցընէք փողը ։ Եւ
յիսուներորդ տարին պիտի սրբէք ,
ու երկրի վրայ անոր բոլոր բնակիչ-
ներուն համար Դ ազատութիւն
քարոզ կարդալ տաք . անիկայ ձեզի
Յոբելեան տօնէ ըլլայ . Ե և ձեզմէ
ամէն մէկը իր ստացուածքին պիտի
դառնայ , ու ձեզմէ ամէն մէկը իր
11 ազգատոհմին դառնայ ։ Աս յի-
սուներորդ տարին Յոբելեան տարի
ըլլայ ձեզի . Զ Ոչ պիտի ցանէք ,
ոչ ալ ինքիրմէ բուսածը պիտի
հնձէք , և ձեր չյօտած այգիէն պիտի
12 չժողվէք . Ինչու որ Յոբելեան տօնէ
է , ան ձեզի սուրբ պիտի ըլլայ .
Է արտէն անոր արդիւնքը պիտի ու-
13 տէք ։ Ը Աս Յոբելեան տարին՝ ձեզ-

Ն · Ք · ՎՔ ·
1490

1491

Ա Եւ · իգ · 10 ։ ԼԷ ։ Տես Գւ · իզ · 34 · 35 ։ բ Մն · Լզ · 21 ։
Բ Դ Թագ · ժԹ · 29 ։
* Եբր · հունձքիդ
Գ Գւ · իգ · 24 · 27 ։
Դ Ես · կա · 2 ։ կգ · 4 ։ Երեմ · Լդ · 8 · 15 · 17 ։ Ղու · դ · 19 ։
Ե Հմր 13 ։ Թու · Լզ · 4 ։
Զ Հմր 5 ։
Է Հմր 6 · 7 ։
Ը Հմր 10 ։ Գւ · իէ · 24 ։ Թու · Լզ · 4 ։

Ն. Ք. Ղ. Ք. 1491

մէ ամէն մէկը իր ստացուածքին
պիտի դառնայ ։
14 Եւ թէ որ քու դրացիիդ բան մը
ծախելու ըլլաս, կամ քու դրացիիդ
ձեռքէն ծախու առնելու ըլլաս,
ᵃ ձեզմէ մէկը իր ընկերին անիրաւու-
15 թիւն պիտի չընէ. ᵇ Ցոբելեան փո-
ղէն ետքը եղած տարիներուն հա-
շիւովը ծախու պիտի առնես քու
դրացիէդ, անիկայ ալ արդիւնքին
տարիներուն հաշիւովը պիտի ծախէ
16 քեզի ։ Տարիներուն շատութեանը
նայելով՝ պիտի աւելցընես անոր գի-
նը, և տարիներուն քիչութեանը
նայելով՝ պիտի պակսեցընես անոր
գինը. ինչու որ անիկայ արդիւն-
17 քին հաշիւովը կը ծախէ քեզի ։ Եւ
ᶜ ձեզմէ մէկը իր ընկերին անիրաւու-
թիւն պիտի չընէ, ᵈ նու քու Աս-
տուծմէդ պիտի վախնաս. ինչու որ
ես եմ Տէրը ձեր Աստուածը ։
18 ᵉ Եւ իմ կանոններս պիտի ընէք,
ու իմ դատաստաններս պահէք՝ և
ընէք անոնք. ᶠ ու ան երկրին մէջ
ապահովութեամբ պիտի բնակիք ։
19 Եւ երկիրը իր արդիւնքը պիտի
տայ, ու ᵍ մինչև կշտանալնիդ պիտի
ուտէք. և անոր մէջ ապահովու-
20 թեամբ պիտի բնակիք ։ Եւ թէ
որ ըսէք թէ՝ ʰ Եօթներորդ տարին
ի՞նչ պիտի ուտենք. ահա ⁱ պիտի
չցանենք ու մեր արդիւնքները պի-
21 տի չժողվենք. Ուրեմն ʲ վեցերորդ
տարին ձեր վրայ պիտի խրկեմ իմ
օրհնութիւնս, և իրեք տարուան
22 արդիւնք պիտի տայ ։ ᵏ Եւ ութե-
րորդ տարին պիտի ցանէք, ու ˡ հին
արդիւնքէն պիտի ուտէք մինչև ին-
ներորդ տարին. մինչև անոր ար-
դիւնքին համնիլը՝ հինէն պիտի
ուտէք
23 Եւ երկիրը պիտի չծախուի մըշ-
տնջենապէս. ինչու որ ᵐ երկիրը իմս
է, ու դուք իմ քովս ⁿ պանդուխտ-
24 ներ ու հիւրեր էք ։ Եւ ձեր կա-
լուածքին բոլոր երկրին մէջ փըր-
կանք պիտի տաք երկրին համար ։
25 ᵒ Թէ որ քու եղբայրդ աղքատա-
նայ՝ և իր ստացուածքին մէկ մասը
ծախէ, ու թէ որ ᵖ անոր մօտ ազ-
գականը անոր գայ, անիկայ իր
26 եղբօրը ծախածը պիտի փրկէ ։ Եւ
թէ որ մարդը փրկող մը չունի, ու
ինքիրմէ կարողանայ ան փրկելու,
27 Ան ատենը ᵠ իր ծախելէն հաշիւ ընէ
տարիները, և աւելցածը ետ տայ
ան մարդուն՝ որուն ծախած էր.
ու իր ստացուածքին դառնայ ։
28 Բայց թէ որ անոր ետ տալու կա-
րող չէ, ան ատենը իր ծախած
բանը ծախու առնողին ձեռքը պի-
տի մնայ մինչև Ցոբելեան տարին,
ʳ և Ցոբելեան փողէն պիտի ելլէ, ու
մէկը իր ստացուածքին պիտի
դառնայ ։
29 Եւ թէ որ մէկը պարսպաւոր քա-
ղաքի մէջ բնակելու տուն մը ծա-
խէ, զանիկայ ծախելէն մինչև լման
տարի մը կրնայ փրկել ան. անոր
փրկանքը մէկ տարուան մէջ պիտի
30 ըլլայ ։ Եւ թէ որ բոլոր տարուան
լմննալուն անիկայ չփրկուի, ան
ատենը պարսպաւոր քաղաքին մէջ
եղած տունը՝ միշտ ծախու առնո-
ղին պիտի մնայ իր ազգերուն մէջ.
Ցոբելեան փողէն ան տունը պիտի
31 չդառնայ ։ Բայց բոլորտիքը պարս-
պաւոր չեղած գիւղաքաղաքներուն
տուները՝ երկրին արտերուն պէս
պիտի սեպուին. անոնք կրնան փըր-
կուիլ, ու Ցոբելեան փողէն պիտի
32 դառնան ։ Իսկ ᵘ Ղևտացւոց քա-
ղաքներուն մէջ իրենց կալուածքի
քաղաքներուն տուները, Ղևտացի-
33 ները միշտ կրնան փրկել ։ Եւ թէ
որ մէկը՝ Ղևտացիներէն * ծախու
առնելու” ըլլայ, ան ատենը † իր
կալուածքը եղած քաղաքին մէջի
ծախուած տունը” ᵛ Ցոբելեան փո-
ղէն պիտի դառնայ. ինչու որ Իս-
րայէլի որդւոցը մէջ Ղևտացւոց
քաղաքներուն տուները իրենց կա-
34 լուածքն է ։ Բայց ʷ իրենց ա-
րուարձաններուն արտերը պիտի
չծախուին. ինչու որ անոնց յաւի-
տենական կալուածքն է ան ։
35 Եւ թէ որ քու եղբայրդ քու
քովդ աղքատանայ՝ ու անոր ձեռ-
քը տկարանայ, անոր ˣ պիտի օգնես
օտարականի ու պանդուխտի պէս,
36 որ քու քովդ ապրի ։ ʸ Անկէ վաշխ
ու տոկոսիք պիտի չառնես, հապա
քու Աստուծմէդ վախնաս, որ եղ-
37 բայրդ ᶻ քու քովդ ապրի ։ Քու
ստակդ վաշխով պիտի չտաս անոր,
և քու կերակուրդ տոկոսիքով
38 չտաս ։ ᵃᵃ Ես եմ Տէրը ձեր Աս-
տուածը, որ ձեզ Եգիպտոսի երկ-
րէն հանեցի՝ Քանանու երկիրը ձե-
զի տալու համար, և ձեզի Աս-
տուած ըլլալու համար ։
39 Եւ ᵇᵇ թէ որ եղբայրդ քու քովդ
աղքատանայ, ու ինքզինքը քեզի
ծախէ, ᶜᶜ անիկայ ծառայի մը պէս
40 պիտի չգործածես. Անիկայ քու
քովդ վարձկանի կամ պանդուխտի
պէս պիտի ըլլայ, ու ծառայէ քեզի
41 մինչև Ցոբելեան տարին. Եւ ան ա-
տենը քու քովէդ պիտի ելլէ, ինքն
ալ ու իր որդիքն ալ ᵈᵈ իր հետը, և
իր ազգատոհմին դառնայ, ու ᵉᵉ իր
հայրերուն կալուածքին դառնայ ։
42 Քանզի անոնք ᶠᶠ իմ ծառաներս են՝
որ Եգիպտոսի երկրէն հանեցի.
անոնք ծառայի ծախուելուն պէս
43 պիտի չծախուին ։ ᵍᵍ Խստու-

ᵃ Հմր. 17 ։ Գւ. ԺԹ. 13. Աթագ. ԺԲ. 3, 4 ։ Միք. Բ. 2 ։ Ա Կոր. Զ. 8 ։
ᵇ Գւ. ԻԷ. 15, 23 ։
ᶜ Հմր 14 ։
ᵈ Հմր 43 ։ Գւ. ԺԹ. 14, 32 ։
ᵉ Գւ. ԺԹ. 37 ։
ᶠ Գւ. Իզ. 5 ։ Բ Օր. ԺԲ. 10 ։ Սաղ. Դ. 8 ։ Առակ. Ա. 33 ։ Երեմ. ԻԳ. 6 ։
ᵍ Գւ. Իզ. 5 ։ Եզեկ. ԼԴ. 25, 27, 28 ։
ʰ Մատ. Զ. 25, 31 ։
ⁱ Հմր 4, 5 ։
ʲ Բ Օր. ԻԸ. 8 ։ Տես Ել. ԺԶ. 29 ։
ᵏ Դ Թագ. ԺԹ. 29 ։
ˡ Յես. Ե. 11, 12 ։
ᵐ Բ Օր. ԼԲ. 43 ։ Բ Մն. Է. 20 ։ Սաղ. ԶԵ. 1 ։ Յովէլ. Բ. 18 ։ Գ. 2 ։
ⁿ Ա Մն. ԻԹ. 15 ։ Սաղ. ԼԹ. 12 ։ ՃԺԹ. 19 ։ Ա Պետ. Բ. 11 ։
ᵒ Հռութ. Բ. 20 ։ Դ. 4, 6 ։
ᵖ Տես Հռութ. Գ. 2, 9, 12 ։ Երեմ. ԼԲ. 7, 8 ։
ᵠ Հմր 50, 51, 52 ։
ʳ Հմր 13 ։

ᵘ Տես Թու. ԼԵ. 2 ։ Յես. ԻԱ. 2, Ա ։
* Եբր. փրկելու
† Եբր. ծախուած տունը և իր կալուածքին քաղաքը
ᵛ Հմր 28 ։
ʷ Տես Գործ. Դ. 36, 37 ։
ˣ Բ Օր. ԺԵ. 7, 8 ։ Սաղ. ԼԷ. 26 ։ ԽԱ. 1 ։ ՃԺԲ. 5, 9 ։ Առակ. ԺԴ. 31 ։ Ղուկ. Գ. 35 ։ Գործ. ԺԱ. 29 ։ Հռովմ. ԺԲ. 13 ։ Ա Յովհ. Գ. 17 ։
ʸ Ել. ԻԲ. 25 ։ Բ Օր. ԻԳ. 19 ։ Նեեմ. Ե. 7 ։ Սաղ. ԺԵ. 5 ։ Առակ. ԻԸ. 8 ։ Եզեկ. ԺԸ. 8, 13, 17 ։ ԻԲ 12 ։
ᶻ Հմր 17 ։ Նեեմ. Ե. 9 ։
ᵃᵃ Գւ. ԻԲ. 32, 33 ։
ᵇᵇ Ել. ԻԱ. 2 ։ Բ Օր. ԺԵ. 12 ։ Գ Թագ. Թ. 22 ։ Դ Թագ. Դ. 1 ։ Նեեմ. Ե. 5 ։ Երեմ. ԼԴ. 14 ։
ᶜᶜ Հմր 46 ։ Ել. Ա. 14 ։ Երեմ. ԻԵ. 14 ։ ԻԷ. 7 ։ Լ. 8 ։
ᵈᵈ Ել. ԻԱ. 3 ։
ᵉᵉ Հմր 28 ։
ᶠᶠ Հմր 55 ։ Հռովմ. Զ. 22 ։ Ա Կոր. Է. 23 ։
ᵍᵍ Հմր 46 ։ Ել. Ա. 13 ։

Ն. Ք. ԴՔ.
1491

թեամբ ֆ պիտի չիշխես անոր վրայ ,
հապա Տէրու Աստուծմէդ վախ-
44 նաս ։ Քու ունենալու ծառադ
ու աղախինդ՝ ձեր բոլորտիքը ե-
ղած ազգերէն ըլլան . ծառայ
ու աղախին անոնցմէ կրնաք ծա-
45 խու առնել ։ Նաև գ ձեր քովը
բնակող օտարականներուն զաւակ-
ներէն , կամ անոնցմէ և կամ ձեր
քովը եղող անոնց ընտանիքներէն՝
որ ձեր երկիրը ծնած են , կրնաք
ծախու առնել , որ ձեր ստա-
46 ցուածքը ըլլան . Եւ ե ձեզմէ ետքը
ձեր որդւոցը ժառանգութեան ըս-
տացուածք ըլլալու համար թողուք
զանոնք , որ զ միշտ ձեր ծառաները
ըլլան . բայց ձեր եղբայրներուն Իս-
րայէլի որդւոցը համար՝ է իրարու
վրայ խստութեամբ պիտի չիշխէք ։
47 Եւ թէ որ քու քովդ եղած օտա-
րականը կամ պանդուխտը հարըս-
տանայ , ու անոր քովը ը բնակող եղբ
եղբայրդ աղքատանայ , և քու քովդ
պանդխտացած օտարականին , կամ
այն օտարականին ընտանեացը մէջ
ազգականին ինքզինքը ծախելու ըլ-
48 լայ , Ինքզինքը ծախելէն ետքը՝ ա-
նիկայ կրնայ փրկուիլ . իր եղբայր-
ներէն մէկը կրնայ թ փրկել զանի-
49 կայ . Անոր հօրեղբայրը կամ հօր-
եղբօրորդին փրկէ զանիկայ , կամ
իր ազգատոհմին մէջ իր մօտ ազ-
գականներէն մէկը փրկէ զանիկայ .
կամ ժ թէ որ կարողանայ , ինք-
50 զինքը թող փրկէ ։ Եւ անիկայ՝
ծախու առնողին հետ՝ ինքզինքը
անոր ծախած տարիէն մինչև Յոբե-
լեան տարին հաշիւ պիտի ընէ , և
իր փրկուելուն ստակը տարիներուն
հաշուովը ըլլայ . անոր ժամանակը
ի վարձկանի ժամանակին պէս հա-
51 շուուի . Թէ որ տակաւին շատ
տարի կայ , անոնց նայելով՝ իր ծա-
խուած գինէն իր փրկանքը պիտի
52 տայ . Եւ թէ որ Յոբելեան տարիին
քիչ տարի մնացեր է , ինքը հաշիւ
պիտի ընէ , ու իր տարիներուն հա-
53 մեմատ իր փրկանքը տայ ։ Ինքը ա-
նոր քովը տարեկան վարձկանի պէս
պիտի սեպուի . ու ան ալ խստու-
թեամբ չիշխէ անոր վրայ քու առ-
54 ջևդ ։ Եւ թէ որ ասս կերպերովս
չփրկուի , Լ Յոբելեան տարին՝ ինքն
ալ ու իր որդիքն ալ իր հետը պի-
55 տի ելլեն . Ինչու որ ի Իսրայէլի որ-
դիքը իմ ծառաներս են . Եգիպ-
տոսի երկրէն իմ հանած ծառաներս
են անոնք . ես եմ Տէրը ձեր Ա-
ստուածը ։

ԳԼ. ԻԶ

1 Կռապաշտութեան վրայով ։ 2 Բարեպաշտու-
թեան վրայով ։ 3 Աստուծոյ պատուիրանք-
ները պահողներուն համար՝ օրհնութիւն , 14
և զանոնք չպահողներուն համար՝ անէծք ։ 40
Աստուած կը խոստանայ ապաշխարողներուն
իր ողորմութիւնը ցուցընել՝ իր ուխտը յիշե-
լով ։

1 Դուք ձեզի ա չաստուածներ ու
կուռքեր պիտի չընէք , և ձեզի
արձաններ պիտի չկանգնէք , և ձեր
երկրին մէջ պատկերաւոր կոթող
պիտի չդնէք՝ անոր երկրպագու-
թիւն ընելու համար . ինչու որ ես
եմ Տէրը ձեր Աստուածը ։
2 բ Իմ շաբաթներս պիտի պահէք ,
ու իմ սրբարանս յարգէք . ես եմ
Տէրը ։
3 գ Թէ որ իմ կանոններովս քալէք ,
և իմ պատուիրանքներս պահէք՝ ու
4 զանոնք 'ի գործ դնէք , դ Ես ալ
ձեզի անձրևը ատենին պիտի տամ ,
Եւ երկիրը իր արդիւնքը պիտի
տայ , ու դաշտին ծառերը իրենց
5 պտուղը պիտի տան . Եւ ե ձեր
կալը մինչև այգեկութը պիտի հաս-
նի , ու այգեկութը մինչև ցանելու
ժամանակը հասնի . և զ ձեր հացը
կուշտ պիտի ուտէք , ու է ձեր երկ-
րին մէջ ապահովութեամբ բնա-
6 կիք ։ Եւ ը խաղաղութիւն պիտի
տամ երկրին , ու թ հանգիստ պիտի
պառկիք , և վախցընող մը պիտի
չըլլայ . ու երկրէն ժ չար գազանները
պիտի հատցընեմ , և ձեր երկրէն
7 ի սուր պիտի չանցնի ։ Եւ ձեր
թշնամիները պիտի հալածէք , ու
անոնք սրով պիտի իյնան ձեր առ-
8 ջևը ։ Եւ լ ձեզմէ հինգ հոգին՝
հարիւրաւորը պիտի հալածէ , և
ձեզմէ հարիւր հոգին՝ բիւրաւորը
պիտի հալածէ , ու ձեր թշնամինե-
րը սրով պիտի իյնան ձեր առջևը ։
9 Եւ խ ձեզի պիտի նայիմ , ու ծ ձեզ
աճեցընեմ և շատցընեմ , ու ձեզի
10 հետ իմ ուխտս հաստատեմ ։ Եւ
կ հին պաշարը պիտի ուտէք , ու
նորին *տեղ ընելու համար* հինը
11 դուրս պիտի հանէք ։ ձ Եւ իմ
խորանս ձեր մէջը պիտի դնեմ , ու
իմ հոգիս ղ ձեզմէ պիտի չզզուի .
12 ճ Եւ ձեր մէջը պիտի քալեմ , ու
մ ձեզի Աստուած ըլլամ , և դուք
13 ինծի ժողովուրդ պիտի ըլլաք ։ յ Ես
եմ Տէրը ձեր Աստուածը , որ ձեզ
Եգիպտացւոց երկրէն հանեցի , որ
անոնց ծառայ չըլլաք , ն ու ձեր
լուծին կապերը խորտակեցի , և
ձեզ բարձրագլուխ քալեցուցի ։
14 շ Բայց թէ որ ինծի մտիկ չընէք ,
ու աս բոլոր պատուիրանքներս չը-
15 կատարէք , Եւ ո իմ կանոններս ա-
նարգէք , ու ձեր հոգին իմ դա-

Left margin references: բ Եփս. զ. 9. Կող. դ. 1. — գ Հմր 17 ։ Եւ. ա. 17, 21. բ Օր. իե. 18 ։ Մաղ. գ. 5. — դ Ես. ծզ. 3, 6. — ե Ես. ժդ. 2։ — զ Հմր 39 ։ — է Հմր 43 ։ — ը Հմր 25, 35 ։ — թ Նեեմ. ե. 5 ։ — ժ Հմր 26 ։ — ի Յոբ. է. 1 ։ Ես. ժզ. 14. իա. 16 ։ — լ Հմր 41 ։ Եւ իա. 2, 3. — խ Հմր 42 ։

Right margin references: Ն. Ք. ԴՔ. 1491 — ա Ել. ի. 4, 5. բ Օր. ե. 8. ժզ. 22. իէ. 15. Սաղ. ղէ. 7. — բ Գլ. ժթ. 30. — գ բ Օր. ժա. 13, 14, 15. իը. 1—14. — դ Ես. լ. 23. Եզեկ. լդ. 26. Յովել. բ. 23, 24. — ե Սաղ. կէ. 6. ձե. 12. Եզեկ. լդ. 27. լզ. 30. Զաք. ը. 12. — զ Ամով. թ. 13. — է Գլ. իե. 19. բ Օր. ժա. 15. Յովել. բ. 19, 26. — ը Գլ. իե. 18. Յոբ. ժա. 18. Եզեկ. լդ. 25, 27, 28. — թ Մն. իբ. 9. Սաղ. իթ. 11. ճխէ. 14. Ես. խե. 7. Անգ. բ. 9. — ժ Յոբ. ժա. 19. Սաղ. գ. 5. դ. 8. Ես. լե. 9. Երեմ. լ. 10. Եզեկ. լդ. 25. Ովս. բ. 18. Սոփ. գ. 13. — ի դ Թագ. ժէ. 25. Եզեկ. ե. 17. ժդ. 15. — լ Եզեկ. ժդ. 17. — խ բ Օր. լբ. 30. Յես. իգ. 10. — ծ Ել. բ. 25. դ Թագ. ժգ. 23. — կ Ծն. ժէ. 6, 7. Նեեմ. թ. 23. Սաղ. ճէ. 38. — հ Գլ. իե. 22. *Եբր. երեսէն — ձ Ել. իե. 8. իթ. 45. Յես. իբ. 19. Սաղ. հզ. 2. Եզեկ. լէ. 26, 27, 28 ։ Յայտ. իա. 3. — ղ Գլ. ի. 23. բ Օր. լբ. 19. — ճ բ Կոր. զ. 16. — մ Եւ. զ. 7. Երեմ. է. 23. ժա. 4. լ. 22. Եզեկ. ժա. 20. լզ. 28. — յ Գլ. իե. 38, 42, 55. — ն Երեմ. բ. 20. Եզեկ. լդ. 27. — շ բ Օր. իը. 15. Ողբ. բ. 17. Մաղ. բ. 2. — ո Հմր 43. դ Թագ. ժէ. 15.

Ն. Ք. ԳՔ. 1491

տաստաններէս զզուի, անանկ որ՝
իմ բոլոր պատուիրանքներս չընէք,
16 և իմ ուխտս աւրէք, Ես ալ ձեզի
աս պիտի ընեմ, այսինքն՝ ձեր վը-
րայ աչք փճացընող և սիրտ մա-
րեցընող վախը՝ ծիւրական ախ-
տը՝ ու հրատադնապ տենդը պիտի
խրկեմ, և ձեր սերմը պարապ տեղը
պիտի սերմանէք. ինչու որ ձեր
17 թշնամիները պիտի ուտեն ան. Եւ
իմ երեսս ձեր վրայ պիտի տնկեմ,
ու ձեր թշնամիներուն առջևը
պիտի սպաննուիք. ձեզ ատող-
ները պիտի իշխեն ձեր վրայ, ու
ձեզ հալածող մը չեղած ատենը՝
18 պիտի փախչիք: Եւ թէ որ ասոնց-
մով ալ ինծի մտիկ չընէք, ան ա-
տենը ձեր մեղքերուն համար ձեզ
եօթնպատիկ ալ պիտի պատ-
19 ժեմ: Եւ ձեր զօրութեանը հը-
պարտութիւնը պիտի խորտակեմ,
ու ձեր երկինքը երկաթի պէս՝ և
ձեր երկիրը պղնձի պէս պիտի ը-
20 նեմ: Եւ ձեր ոյժը պարապ տե-
ղը պիտի հատնի, ու ձեր երկիրը
իր արդիւնքը պիտի չտայ, և երկ-
րին ծառերը իրենց պտուղը չտան:
21 Եւ թէ որ դուք ինծի հետ հա-
կառակ երթաք՝ ու չուզէք ինծի
մտիկ ընել, ան ատենը ձեր մեղքե-
րուն համեմատ եօթնպատիկ հա-
րուածք պիտի աւելցընեմ ձեր վը-
22 րայ: Եւ ձեր վրայ դաշտի գա-
զանները պիտի խրկեմ, ու ձեզ
անզաւակ պիտի ընեն, ու ձեր ա-
նասունները ջարդեն, և ձեզ պիտի
քիչցընեն. ու ձեր ճամբանե-
23 րը անապատ պիտի դառնան: Եւ
թէ որ ասոնցմով ալ չխրատուիք
ինծմէ, ու ինծի հետ հակառակ
24 երթաք, Ան ատենը ես ալ ձեզի
հետ հակառակ պիտի երթամ, և
ես ալ ձեր մեղքերուն համար եօ-
թընպատիկ պիտի պատժեմ ձեզ:
25 Եւ ձեր վրայ ուխտիս վրէժը առ-
նող սուրը պիտի խրկեմ, ու ձեր
քաղաքներուն մէջ պիտի ժող-
վուիք, և ձեր մէջը ժանտախտ
պիտի խրկեմ, ու թշնամիին ձեռ-
26 քը պիտի մատնուիք: Ձեր հա-
ցին ցուպը կոտրած ատենս, տասը
կնիկ մէկ թոնիրի մէջ պիտի եփեն
ձեր հացը, և ձեր հացը կշռով պի-
տի տրուի ձեզի. ու պիտի ու-
տէք, և չկշտանաք:
27 Եւ թէ որ ասոնցմով ալ ինծի
մտիկ չընէք, հապա հակառակ եր-
28 թաք ինծի հետ, Ան ատենը ես ալ
ձեզի հետ հակառակ պիտի երթամ
բարկութեամբ, և ձեր մեղքերուն
համար եօթնպատիկ պիտի պատ-
29 ժեմ ձեզ. Եւ ձեր տղաքներուն
միսը պիտի ուտէք, ու ձեր աղ-
30 ջիկներուն միսը ուտէք: Եւ ձեր
բարձր տեղուանքը պիտի աւրեմ,
ու ձեր արեգական կուռքերը կո-
տըրտեմ, և ձեր դիերը ձեր կուռ-
քերուն դիերուն վրայ պիտի դնեմ,
ու իմ հոգիս ձեզմէ պիտի զզուի:
31 Եւ ձեր քաղաքները աւերակ՝ ու
ձեր սուրբ տեղերը ամայի պիտի
ընեմ. և ձեր անուշ հոտը պիտի
32 չհոտուըտամ: Եւ ան երկիրը ա-
մայի պիտի ընեմ, որ հոն բնակող
ձեր թշնամիները զարմանան անոր
33 վրայ: Եւ ձեզ ազգերու մէջ պի-
տի ցրուեմ, ու ձեր ետևէն սուր
պիտի քաշեմ, և ձեր երկիրը ա-
մայի պիտի ըլլայ, ու ձեր քաղաք-
34 ները աւերակ: Ան ատենը երկի-
րը իր ամայութեանը բոլոր օրերը՝
իր շաբաթները պիտի վայելէ, երբ-
որ դուք ձեր թշնամիներուն երկիրը
ըլլաք. երկիրը ան ատենը հանգիստ
ըլլալով՝ իր շաբաթները պիտի վա-
35 յելէ. Իր ամայութեանը բոլոր օ-
րերը պիտի հանգստանայ. քանզի
ձեր շաբաթներուն մէջ չէր հան-
գըստանար, երբոր անոր վրայ կը բը-
36 նակէիք: Եւ ձեզմէ մնացածնե-
րուն սրտին՝ դողում պիտի բե-
րեմ իրենց թշնամեացը երկիրնե-
րուն մէջ, ու հովէն քշուած տե-
րևին ձայնը պիտի հալածէ զա-
նոնք. և սուրի բերնէ փախչելու
պէս՝ պիտի փախչին անոնք, ու
հալածող մը չեղած ատենը պի-
37 տի իյնան: Եւ հալածող մը չե-
ղած ատենը՝ սուրի երեսէ փախչելու
պէս իրարու վրայ պիտի իյնան. և
պիտի չկրնաք ձեր թշնամիներուն
38 առջևը կայնիլ: Եւ ազգերուն
մէջ պիտի կորսուիք, ու ձեր թըշ-
նամիներուն երկիրը ձեզ պիտի ու-
39 տէ: Եւ ձեզմէ մնացածները ի-
րենց անօրէնութիւնովը պիտի հա-
լին ձեր թշնամեացը երկիրներուն
մէջ. նաև իրենց հարցը անօրէնու-
թիւններովը մէկտեղ պիտի հալին:
40 Եւ թէ որ խոստովանին իրենց
անօրէնութիւնը ու հայրերնուն ա-
նօրէնութիւնը՝ ինծի դէմ գործած
իրենց յանցանքներովը, և թէ ի-
րենց ինծի հետ հակառակ երթալը,
41 Ու նաև իմ անոնց հետ հակառակ
երթալս, ու զանոնք իրենց թշնա-
միներուն երկիրը բերելս. թէ որ
ան ատենը անոնց անթլփատ սիր-
տը խոնարհի, և իրենց անօրէնու-

Ն. Ք. ԳՔ. 1491

Բ Օր. իը. 53: Դ Թագ. զ. 29: Եզեկ. ե. 10: Ողբ. դ. 10: Բ Մն. լդ. 3, 4, 7: Ես. իէ. 9: Եզեկ. զ. 3, 4, 5, 6, 13: Դ Թագ. իդ. 20: Բ Մն. լդ. 5: Ղև. ի. 23: Սաղ. հը. 59: Յթ. 38: Երեմ. ժդ. 19: Նեեմ. բ. 3: Երեմ. դ. 7: Եզեկ. զ. 6: Սաղ. հդ. 7: Ողբ. ա. 10: Եզեկ. թ. 6: խա. 7: Երեմ. թ. 11: խե. 11, 18: Բ Օր. իը. 37: Գ Թագ. թ. 8: Երեմ. ժը. 16: ժթ. 8: Եզեկ. ե. 15: Բ Օր. դ. 27: իը. 64: Սաղ. խդ. 11: Երեմ. թ. 16: Եզեկ. ժբ. 15: ի. 23: իբ. 15: Զաք. է. 14: Բ Մն. լզ. 21: Գլ. իե. 2: Եզեկ. խա. 7, 12, 15: Հմր 17: Յոր. ժե. 21: Առակ. իը. 1: Ես. ժ. 4: Տե՛ս Դատ. է. 22: Ա Թագ. ժդ. 15, 16: Յեսու. է. 12, 13: Դատ. բ. 14: Բ Օր. դ. 27: իը. 65: Նեեմ. ա. 9: Երեմ. գ. 25: իթ. 12, 13: Եզեկ. դ. 17: զ. 9: ի. 43: իդ. 23: լգ. 10: լզ. 31: Ովս. ե. 15: Զաք. ժ. 9: Ղուկ. ե. 7: Գ Թագ. ը. 33, 35, 47: Նեեմ. թ. 2: Դան. թ. 3, 4: Առակ. իը. 13: Ղու. ժե. 18: Ա Յոհ. ա. 9: Տե՛ս Երեմ. զ. 10: թ. 25, 26: Եզեկ. խդ. 7: Գործ. է. 51: Հռով. բ. 29: Կող. բ. 11: Գ Թագ. իա. 29: Բ Մն. ժբ. 6, 7, 12: լբ. 26: լգ. 12, 13:

Ն. Ք. ԳՔ. 1491

Հ Բ Թագ. բ. 33: Բ Օր. իը. 65, 66, 67: լբ. 25: Երեմ. ժե. 8: Բ Օր. իը. 22: Բ Օր. իը. 33, 51: Յոբ. լա. 8: Երեմ. ե. 17: ժբ. 13: Միք. զ. 15: Գլ. ժէ. 10: Բ Օր. իը. 25: Դատ. բ. 14: Երեմ. ժթ. 7: Սաղ. ճզ. 41: Հմր 36: Սաղ. ծդ. 5: Առակ. իը. 1: Ա Թագ. բ. 5: Սաղ. ճժթ. 164: Առակ. իդ. 16: Ես. իե. 11: իզ. 5: Եզեկ. է. 24: լ. 6: Բ Օր. իը. 23: Սաղ. ճիէ. 1: Ես. խթ. 4: Բ Օր. ժա. 17: իը. 18: Անգ. ա. 10: Հմր 24: Բ Օր. լբ. 24: Դ Թագ. ժէ. 25: Եզեկ. ե. 17: ժդ. 15: Դատ. ե. 6: Բ Մն. ժե. 5: Ես. լդ. 8: Ողբ. ա. 4: Զաք. է. 14: Երեմ. բ. 30: ե. 3: Ամով. դ. 6—12: Բ Թագ. իբ. 27: Սաղ. ժը. 26: Եզեկ. ե. 17: զ. 3: ժդ. 17: իթ. 8: լդ. 2: Թու. ժդ. 12: Բ Օր. իը. 21: Երեմ. ժդ. 12: իդ. 10: իթ. 17, 18: Ամով. դ. 10:

Ս Սաղ. ճե. 16: Ես. գ. 1: Եզեկ. դ. 16: ե. 16: ժդ. 13: Ես. թ. 20: Միք. զ. 14: Անգ. ա. 6: Հմր 21, 24: Ես. ծթ. 18: կդ. 3: կզ. 15: Երեմ. խա. 5: Եզեկ. ե. 13, 15: ը. 18:

Ն․ Ք․ ՂՔ․
1491

Ղեւ․ բ․ 24 ։ Գ․ 5 ։ Սաղ․ ՃԶ․ 45 ։ Եզեկ․ ԺԶ․ 60 ։
ռ Սաղ․ ՃԼԶ․ 23 ։
ր Հմր 34 , 35 ։
ց Հմր 15 ։
ռ Բ Օր․ Դ․ 31 ։ Գթաղ․ ԺԳ․ 23 ։ Հռով․ ԺԱ․ 2 ։
ւ Հռով․ ԺԱ․ 28 ։
փ Գլ․ ԻԲ․ 33 ։ ԻԵ․ 38 ։
ք Սաղ․ ՂԸ․ 2 ։ Եզեկ․ Ի․ 9 , 14 , 22 ։
օ Գլ․ ԻԷ․ 34 ։ Բ Օր․ Գ․ 1 ։ ԺԲ․ 1 ։ ԼԴ․ 4 ։ Յով․ Ա․ 17 ։
ռ Գլ․ ԻԵ․ 1 ։

*թեանը պատիժը յօժարութեամբ*
42 *ընդունին. Ան ատենը կպիտի յիշեմ*
*Յակոբին հետ ըրած ուխտս , նաեւ*
*Իսահակին հետ ըրած ուխտս , և*
*Աբրահամին հետ ըրած ուխտս ալ*
*պիտի յիշեմ , ու այն երկիրն ալ*
*պիտի յիշեմ ։*
43 Եւ *այնպէս՝ այն երկիրը պիտի*
*ձգուի անոնցմէ , ու իր շաբաթները*
*պիտի վայելէ , քանի որ անոնցմէ*
*ամայի մնայ . և անոնք իրենց ա–*
*նօրէնութեանը պատիժը յօժարու–*
*թեամբ պիտի ընդունին . քանզի*
*ցիմ դատաստաններս անարգեցին ,*
*ու անոնց հոգիները իմ կանոննե–*
44 *րէս զզուեցան ։ Այսու ամենայ–*
*նիւ երբոր իրենց թշնամիներուն եր–*
*կիրը ըլլան , ռանոնք պիտի չմեր–*
*ժեմ , և զանոնք բոլորովին կոր–*
*սնցընելու՝ ու անոնց հետ ըրած*
*ուխտս ջնջելու չափ պիտի չզզուիմ*
*անոնցմէ . ինչու որ ես եմ Տէրը ա–*
45 *նոնց Աստուածը . Բայց անոնց հա–*
*մար պիտի յիշեմ ւիրենց նախնեա–*
*ցը ուխտը , փորոնք Եգիպտոսի երկ–*
*րէն հանեցի՝ քազգաց առջեւը ա–*
*նոնց Աստուած ըլլալու համար . ես*
*եմ Տէրը ։*
46 օ*Ասոնք են այն կանոնները և դա–*
*տաստանները ու օրէնքները՝ որ Տէ–*
*րը տուաւ իր ու Իսրայէլի որդւոցը*
*մէջ ռՍինայ լեռը Մովսէսին ձեռ–*
*քովը ։*

## ԳԼ․ ԻԷ

1 Մարդու մը անձնական ուխտին համար ։ 3 Անձերուն փրկանաց գինը ։ 9 Ուխտով ընծայուած անասուններու վրայով ։ 14 Ընծայուած տան մը վրայով ։ 16 Ընծայուած արտի մը ու անոր փրկանացը վրայով ։ 28 Նուիրուած բանը չէր կրնար փրկուիլ ։ 32 Տասանորդը չէր կրնար փոխուիլ ։

ա Թուոց Զ․ 2 ։ Տես Դատ․ ԺԱ․ 30 , 31 , 39 ։ Ա Թագ․ Ա․ 11 , 28 ։
բ Ել․ Լ․ 13 ։

1 Եւ Տէրը խօսեցաւ Մովսէսին ը–
2 *սելով . Խօսէ Իսրայէլի որդւո–*
*ցը՝ ու ըսէ անոնց . աԵրբոր մէկը*
*ուխտ ընելու ըլլայ . անձանց գինը՝*
*քու արժեցուցածիդ պէս՝ Տէրոջը*
3 *պէտք է ըլլայ ։ Եւ քու կտրելու*
*գինդ այսպէս պիտի ըլլայ . Քսան*
*տարեկանէն մինչեւ վաթսուն տարե–*
*կան եղող արուին կտրելու գինդ*
*բսրբարանին սիկղին համեմատ՝ յի–*
*սուն սիկղ արծաթ պիտի ըլլայ .*
4 *Եւ թէ որ էգ է , քու կտրելու*
*գինդ երեսուն սիկղ պիտի ըլլայ ։*
5 *Եւ թէ որ հինգ տարեկանէն մինչեւ*
*քսան տարեկան է , ան ատենը*
*արուին համար քու կտրելու գինդ*
*քսան սիկղ՝ ու էգին համար տա–*
6 *սը սիկղ պիտի ըլլայ ։ Եւ թէ որ*
*մէկ ամսականէն մինչեւ հինգ տա–*
*րեկան ըլլայ , ան ատենը արուին*
*համար կտրելու գինդ հինգ սիկղ*
*արծաթ , ու էգին համար կտրելու*
*գինդ՝ իրեք սիկղ արծաթ պիտի*
7 *ըլլայ ։ Եւ թէ որ վաթսուն տարե–*
*կանէն վեր ըլլայ , արուին համար*
*քու կտրելու գինդ տասնուհինգ*
*սիկղ՝ ու էգին համար տասը սիկղ*
8 *պիտի ըլլայ ։ Եւ թէ որ քու*
*կտրելու գնոյդ անոր կարողութիւ–*
*նը չհասնի , անիկայ քահանային*
*առջեւը պիտի ելլէ , ու անոր գինը*
*քահանան կտրէ . քահանան ուխտ*
*ընողին կարողութեանը նայելով՝*
*անոր գին պիտի կտրէ ։*
9 *Եւ թէ որ իր ուխտը՝ Տէրոջը զոհ*
*մատուցուելու անասուններէն է ,*
*անոնցմէ ինչ որ Տէրոջը տայ ,*
10 *սուրբ պիտի ըլլայ . Ինքը պիտի*
*չփոխէ զան , և աղէկը գէշին հետ՝ կամ*
*գէշը աղէկին հետ չփոխէ . և թէ որ*
*անասունը անասունի հետ փոխելու*
*ըլլայ , ան ատենը ան ընծայուածը*
*ու անոր փոխանակը սուրբ պիտի*
11 *ըլլայ ։ Եւ թէ որ իր ուխտը՝ Տէ–*
*րոջը զոհ չմատուցուելու անմաքուր*
*անասուններէն ըլլայ , ան ատենը*
*քահանային առջեւը պիտի հանէ ան*
12 *անասունը . Ու քահանան անոր ա–*
*ղէկութեանը կամ գէշութեանը*
*նայելով՝ գին պիտի կտրէ . քահա–*
*նան ինչ գին որ կտրէ , անանկ*
13 *թող ըլլայ ։ գԻսկ թէ որ զանիկայ*
*փրկելու ըլլայ , ան ատենը քու*
*կտրած գնոյդ վրայ հինգերորդ մաս*
*մը պիտի աւելցընէ ։*
14 *Ու երբոր մարդ մը իր տունը*
*Տէրոջը սուրբ ըլլալու համար ըն–*
*ծայէ , ան ատենը քահանան անոր*
*աղէկութեանը կամ գէշութեանը*
*նայելով՝ գին պիտի կտրէ . քահա–*
*նան անոր ինչ գին որ կտրէ , ա–*
15 *նանկ պիտի կենայ ։ դԵւ թէ որ*
*ընծայողը իր տունը փրկելու ըլլայ ,*
*քու կտրած գնոյդ վրայ հինգերորդ*
*մաս մը պիտի աւելցընէ , ու տունը*
*անորը պիտի ըլլայ ։*
16 *Եւ թէ որ մարդ մը իր կալուած–*
*քին արտէն ընծայելու ըլլայ Տէրո–*
*ջը , ան ատենը քու կտրած գինդ*
*անոր սերմին համեմատ պիտի ըլ–*
*լայ . մէկ քոռ գարիի սերմի հա–*
*մար՝ յիսուն սիկղ արծաթ ըլլայ ։*
17 *Թէ որ իր արտը Յոբելեան տարիէն*
*ընծայէ , քու կտրած գնոյդ պէս*
18 *պիտի կենայ ։ Եւ թէ որ իր ար–*
*տը Յոբելեան տարիէն ետքը ընծա–*
*յէ , քահանան անոր հետ ստակը*
*մինչեւ Յոբելեան տարիին մնացած*
*տարիներուն նայելով՝ եհաշուէ պիտի*
*ընէ , ու քու կտրած գինէդ վար*
19 *պիտի իջեցընէ . զԻսկ թէ որ արտը*
*ընծայողը փրկելու ըլլայ զանիկայ ,*
*ան ատենը քու կտրած գնոյդ ստա–*
*կին վրայ հինգերորդ մաս մը աւել–*
*ցընէ , ու ան արտը պիտի հաստա–*
20 *տուի անոր ։ Եւ թէ որ արտը*

Ն․ Ք․ ՂՔ․
1491

գ Հմր 15 , 19 ։
դ Հմր 13 ։
ե Գլ․ ԻԵ․ 15 , 16 ։
զ Հմր 13 ։

Ն․ Ք․ ՉՔ․ 1491

Է Գլ․ ԻԵ․ 10․ 28․ 31։ Ը Հմր 23։ Դ Թու․ ԺԸ․ 14։ Եզեկ․ ԽԴ․ 29։ Ժ Գլ․ ԻԵ 10․ 25։ Ի Հմր 18։ Լ Գլ․ ԻԵ․ 28։ Խ Ել․ Լ․ 13։ Թու․ Գ․ 47։ ԺԸ․ 16։ Եզեկ․ ԽԵ․ 12։ Ծ Ել․ ԺԳ․ 2․ 12։ ԻԲ․ 30։ Թու․ ԺԸ․ 17։ Բ Օր․ ԺԵ․ 19։ Կ Հմր 11․ 12․ 13։

չփրկէ․ կամ արտը մէկ ուրիշի մը
ծախած ըլլայ․ ալ նորէն պիտի չը-
21 փրկուի․ Հապա արտը Է երբ
որ Յոբելեան տարիին մէջ դառնայ․
Ը նուիրուած արտի պէս սուրբ պի-
տի ըլլայ Տէրոջը․ Դ անոր կալուած-
քը քահանայինը պիտի ըլլայ։
22 Եւ թէ որ մէկը Տէրոջը ընծայէ
իր ծախու առած արտը, որ Ժ իր
23 կալուածքին արտէն չէ, Ի Ան ատենը
քահանան անոր հետ քու կտրած
գնոյդ հաշիւը ընէ մինչև Յոբելեան
տարին, և ան օրը քու կտրած
գինդ սուրբ բանի պէս պիտի տայ
24 Տէրոջը։ Լ Յոբելեան տարին արտը
ծախողին՝ այսինքն որուն որ կը վե-
րաբերի գետնի կալուածքը, անոր
25 պիտի դառնայ։ Եւ քու բոլոր
կտրած գիներդ սրբարանին սիկղին
համեմատ պիտի ըլլան․ Խ սիկղը
քսան կերատ ըլլայ։
26 Միայն թէ Ծ անասուններուն
առջինեկը՝ առջի ծնած ըլլալուն
համար Տէրոջը ըլլալովը, մէկը պի-
տի չընծայէ զան․ թէ արջառ ըլլայ՝
27 և թէ ոչխար, Տէրոջն է։ Եւ թէ
որ անմաքուր անասուններէն է․
քու կտրած գնոյդ համեմատ պիտի
փրկէ զան, Կ ու անոր վրայ հին-
գերորդ մաս մը աւելցընէ․ և թէ
որ չփրկուիր, քու կտրած գնովդ
թող ծախուի։
28 Հ Բայց մարդու մը իր բոլոր ունե-
ցած մարդոցմէն և անասուններէն
ու իր կալուածքին արտէն Տէրոջը
նուիրածը պիտի չծախուի ու չփըր-
կուի․ ամէն նուէր ամենասուրբ է
29 Տէրոջը։ Մարդոցմէ նուիրուած
նուէր մը բնաւ պիտի չփրկուի, հա-
պա անշուշտ պիտի մեռցուի։
30 Եւ Ղ երկրին բոլոր տասանորդը՝
Ճ թէ երկրին հունտերէն և Ճ թէ ծառե-
րուն պտուղէն՝ Տէրոջն է․ անիկայ
31 սուրբ է Տէրոջը։ Մ Եւ թէ որ մարդ
մը իր տասանորդներէն փրկել ու-
զէ, անոր վրայ հինգերորդ մաս մը
32 պիտի աւելցընէ։ Եւ արջառնե-
րուն ու ոչխարներուն ամէն տասա-
նորդը՝ Յ գաւազանին տակէն ամէն
անցնողին տասներորդը՝ սուրբ պի-
33 տի ըլլայ Տէրոջը։ Աղէկին ու գէշին
մէջտեղը տարբերութիւն պիտի չը-
նէ․ Ն ու չփոխէ զան․ և թէ որ փո-
խելու ըլլայ, ան ատենը ան ալ՝ ա-
նոր փոխանակն ալ սուրբ պիտի ըլ-
լայ․ պիտի չփրկուի։
34 Շ Տէրոջը՝ Իսրայէլի որդւոցը հա-
մար Սինայ լեռը Մովսէսին պա-
տուիրած պատուիրանքները ասոնք
են։

Ն․ Ք․ ՉՔ․ 1491

Հ Հմր 21։ Յես․ Զ․ 17, 18, 19։ Ղ Թու․ ԽԱ․ 2, 3։ Ղ Ծն․ ԻԸ․ 22։ Թու․ ԺԸ․ 21․ 24։ Բ Մն․ ԼԱ․ 5, 6, 12։ Նեեմ․ ԺԳ․ 12։ Մաղ․ Գ․ 8, 10։ Մ Հմր 13։ Յ Տես Երեմ․ ԼԳ․ 13։ Եզեկ․ Ի․ 37։ Միք․ Է․ 14։ Ն Հմր 10։ Շ Գլ․ ԻԶ․ 46։

# ԳԻՐՔ ԹՈՒՈՑ

## ԳԼՈՒԽ Ա

1 Աստուած Մովսէսին կը պատուիրէ որ ժողո-
վուրդը համրէ։ 5 Ցեղերուն իշխանները։
17 Ամէն մէկ ցեղին հաշիւը։ 47 Ղևտացի-
ները մէկալ ցեղերուն հետ չհամրուեցան՝ Տէ-
րոջը պաշտօնին համար որոշուելով։

Ն․ Ք․ ՉՔ․ 1490

Ա Ել․ ԺԹ․ 1։ Գլ․ Ժ․ 11․ 12։ Բ Ել․ ԻԵ․ 22։ Գ Ել․ Լ․ 12։ ԼԸ․ 26։ Գլ․ ԻԶ․ 2․ 63, 64։ Բ Թագ․ ԻԴ․ 2։ Ա Մն․ ԻԱ․ 2։ * Եբր․ ելլողները՝

1 Եւ Տէրը Մովսէսին խօսեցաւ
Ա Սինայի անապատը Բ ժողովքի
խորանին մէջը՝ անոնց Եգիպտոսի
երկրէն ելլելուն երկրորդ տարին
երկրորդ ամսուն առաջին օրը՝ ը-
2 սելով․ Գ Առէք Իսրայէլի որդւոցը
բոլոր ժողովքին գումարը, իրենց
ազգատոհմերուն ու իրենց հարցը
տուներուն համեմատ՝ ամէն մէկ ա-
րուն իրենց անուններուն թիւովը
3 համրելով։ Դուն ու Ահարոնը՝ Իս-
րայէլի մէջ բոլոր պատերազմելու
* կարող եղողները՝ քսան տարե-
կանէն վեր անոնց գունդերուն հա-
4 մեմատ պիտի համրէք։ Եւ ձեր
հետը ամէն ցեղէն մէյմէկ մարդ
պիտի ըլլայ․ անոնց ամէն մէկը իր
հօրը տանը իշխանը ըլլայ։
5 Եւ ձեզի հետ կենալու մարդոցը
անունները ասոնք են․ Ռուբէնէն՝
6 Սեդիուրին որդին Եղիսուրը, Շը-
մաւոնէն՝ Սուրիսադային որդին Սա-
7 ղամիէլը, Յուդայէն՝ Ամինադաբին
8 որդին Նաասոնը, Իսաքարէն՝ Սով-
9 գարին որդին Նաթանայէլը, Զա-
բուղոնէն՝ Քելոնին որդին Եղիա-
10 բը, Յովսէփի որդւոցմէ Եփրեմէն՝
Ամիուդին որդին Եղիսաման, Մա-
նասէէն՝ Փադասուրին որդին Գա-
11 մաղիէլը, Բենիամինէն՝ Գեդէօնիին
12 որդին Աբիդանը, Դանէն՝ Ամիսա-
13 դային որդին Աքիեզերը, Ասերէն՝
14 Եքրանին որդին Փագիէլը, Գա-
դէն՝ Ե Դագուէլին որդին Եղիասա-
15 փը, Նեփթաղիմէն՝ Ենանին որդին
16 Աքիրէն, Զ Ասոնք էին ժողովքին
երևելիները՝ իրենց հարցը ցեղերուն
իշխանները՝ Է Իսրայէլի հազարա-
պետները։
17 Եւ Մովսէս ու Ահարոն ասոնց
անուններովը յիշուած մարդիկը ա-
18 ռին․ Եւ երկրորդ ամսուն առաջին
օրը բոլոր ժողովքը ժողվեցին,
որոնք իրենց տոհմերուն ու իրենց

Ն․ Ք․ ՉՔ․ 1490

Ե Կամ՝ Ռագուէլին․ Գլ․ Բ․ 14։ Զ Գլ․ Է․ 2։ Ա Մն․ ԻԷ․ 16։ Է Ել․ ԺԸ․ 21․ 25։

Ն․ ք․ գ․ ք․ 1490

հարցը տուներուն համեմատ՝ քսան տարեկանէն վեր ամէն մէկ համբուողները իրենց անուններուն
19 թուովը արձանագրեցան ։ Տէրը Մովսէսին ինչպէս որ պատուիրեց, անիկայ Սինայի անապատին մէջ անանկ համրեց զանոնք ։
20 Եւ Իսրայէլի անդրանիկ որդւոյն Ռուբէնին որդիքը իրենց սերունդովը՝ իրենց տոհմերուն ու իրենց հարցը տուներուն համեմատ՝ քսան տարեկանէն վեր բոլոր պատերազմելու կարող եղողները՝ ամէն մէկ արուն իրենց անուններուն թուովը,
21 Ռուբէնին ցեղէն համրուածները քառասունուվեց հազար հինգ հարիւր հոգի էին ։
22 Շմաւոնի որդիքը իրենց սերունդովը՝ իրենց տոհմերուն ու իրենց հարցը տուներուն համեմատ՝ քսան տարեկանէն վեր բոլոր պատերազմելու կարող եղողները՝ ամէն մէկ արուն իրենց անուններուն
23 թուովը, Շմաւոնին ցեղէն համրուածները յիսունուինը հազար իրեք հարիւր հոգի էին ։
24 Գադի որդիքը իրենց սերունդովը՝ իրենց տոհմերուն ու իրենց հարցը տուներուն համեմատ՝ քսան տարեկանէն վեր բոլոր պատերազմելու կարող եղողները՝ իրենց
25 անուններուն թուովը, Գադին ցեղէն համրուածները քառասունուհինգ հազար վեց հարիւր յիսուն հոգի էին ։
26 Յուդայի որդիքը իրենց սերունդովը՝ իրենց տոհմերուն ու իրենց հարցը տուներուն համեմատ՝ քսան տարեկանէն վեր բոլոր պատերազմելու կարող եղողները՝ իրենց ա-
27 նուններուն թուովը, Յուդային ցեղէն համրուածները եօթանասունուչորս հազար վեց հարիւր հոգի էին ։
28 Իսաքարի որդիքը իրենց սերունդովը՝ իրենց տոհմերուն ու իրենց հարցը տուներուն համեմատ՝ քսան տարեկանէն վեր բոլոր պատերազմելու կարող եղողները՝ իրենց
29 անուններուն թուովը, Իսաքարին ցեղէն համրուածները յիսունուչորս հազար չորս հարիւր հոգի էին ։
30 Զաբուղոնի որդիքը իրենց սերունդովը՝ իրենց տոհմերուն ու իրենց հարցը տուներուն համեմատ՝ քսան տարեկանէն՝ վեր բոլոր պատերազմելու կարող եղողները՝ իրենց
31 անուններուն թուովը, Զաբուղոնին ցեղէն համրուածները յիսունուեօթը հազար չորս հարիւր հոգի էին ։
32 Յովսէփի որդւոցմէ Եփրեմի որդիքը իրենց սերունդովը՝ իրենց տոհմերուն ու իրենց հարցը տուներուն համեմատ՝ քսան տարեկանէն վեր բոլոր պատերազմելու կարող եղողները՝ իրենց անուններուն
33 թուովը, Եփրեմին ցեղէն համրուածները քառասուն հազար հինգ հարիւր հոգի էին ։
34 Մանասէի որդիքը իրենց սերունդովը՝ իրենց տոհմերուն ու իրենց հարցը տուներուն համեմատ՝ քսան տարեկանէն վեր բոլոր պատերազմելու կարող եղողները՝ իրենց
35 անուններուն թուովը, Մանասէին ցեղէն համրուածները երսունուերկու հազար երկու հարիւր հոգի էին ։
36 Բենիամինի որդիքը իրենց սերունդովը՝ իրենց տոհմերուն ու իրենց հարցը տուներուն համեմատ՝ քսան տարեկանէն վեր բոլոր պատերազմելու կարող եղողները՝ իրենց
37 անուններուն թուովը, Բենիամինին ցեղէն համրուածները երսունուհինգ հազար չորս հարիւր հոգի էին ։
38 Դանի որդիքը իրենց սերունդովը՝ իրենց տոհմերուն ու իրենց հարցը տուներուն համեմատ՝ քսան տարեկանէն վեր բոլոր պատերազմելու կարող եղողները՝ իրենց անուննե-
39 րուն թուովը, Դանին ցեղէն համրուածները վաթսունուերկու հազար եօթը հարիւր հոգի էին ։
40 Ասերի որդիքը իրենց սերունդովը՝ իրենց տոհմերուն ու իրենց հարցը տուներուն համեմատ՝ քսան տարեկանէն վեր բոլոր պատերազմելու կարող եղողները՝ իրենց ա-
41 նուններուն թուովը, Ասերին ցեղէն համրուածները քառասունումէկ հազար հինգ հարիւր հոգի էին ։
42 Նեփթաղիմի որդիքը իրենց սերունդովը՝ իրենց տոհմերուն ու իրենց հարցը տուներուն համեմատ՝ քսան տարեկանէն վեր բոլոր պատերազմելու կարող եղողները՝ իրենց
43 անուններուն թուովը, Նեփթաղիմին ցեղէն համրուածները յիսունուիրեք հազար չորս հարիւր հոգի էին ։
44 ²Ասոնք են ան համրուած հոգիները, որ Մովսէսը՝ Ահարոնը ու Իսրայէլի իշխանները համրեցին. [illegible] իշխանները տասուերկու մարդիկ էին, ամէն մէկը իր հայրերուն տա-
45 նը կողմէն ։ Այսպէս Իսրայէլի որդւոցը ամէնը իրենց հարցը տուներուն համեմատ՝ Իսրայէլի մէջ քսան տարեկանէն վեր բոլոր պատերազմելու կարող եղողները համրուե-
46 ցան ։ Եւ բոլոր համրուածները ³վեց հարիւր երեք հազար հինգ հարիւր յիսուն հոգի էին ։

Ն․ ք․ գ․ ք․ 1490

² Գլ․ իզ․ 64․

³ Ել․ լը․ 26․ Տես Ել․ ժբ․ 37․ Գլ․ բ․ 32․ իզ․ 51․

Ն․ Ք․ ԴՌ․ 1490

է Գլ․ բ․ 33։ Տես գ․ և դ․ և իզ․ 57։ ա Մն․ զ։ իա․ 6։
ը Գլ․ բ․ 33։ իզ․ 62։
ժ Ել․ լբ․ 21։ Գլ․ գ․ 7, 8։ դ․ 15, 25, 26, 27, 33։
ի Գլ․ գ․ 23, 29, 35, 38։
ւ Գլ․ ժ․ 17, 21։
խ Գլ․ գ․ 10, 38։ ժը․ 22։
ծ Գլ․ բ․ 2, 34։
կ Հմր 50։
հ Ղև․ ժ․ 6։ Գլ․ ը․ 19։ ժզ․ 46։ ժը․ 5։ ա Թագ․ զ․ 19։
յ Գլ․ գ․ 7, 8։ ը․ 24, 25, 26։ ժը․ 3, 4, 5։ լա․ 30, 47։ ա Մն․ իգ․ 32։ բ Մն․ ժգ․ 10։

47 Բայց էՂևտացիները իրենց հայ-
րերուն ցեղովը անոնց հետ չհամ-
48 րուեցան․ Քանզի Տէրը խօսեր էր
49 Մովսէսին՝ ըսելով․ ըՄիայն Ղև-
տացւոց ցեղը պիտի չհամրես, և
Իսրայէլի որդւոցը հետ անոնց գու-
50 մարը պիտի չառնես․ ժԲայց դուն
Ղևտացիները վկայութեան խորա-
նին՝ ու անոր բոլոր՝ կարասինե-
րուն՝ և անոր վերաբերեալ բոլոր
բաներուն վերակացու պիտի դնես․
անոնք պիտի վերցնեն խորանը ու
անոր բոլոր կարասիները, և անոր
սպասաւորութիւնը անոնք պիտի
ընեն․ իու խորանին բոլորտիքը ա-
51 նոնք պիտի բանակին։ լԵւ խորա-
նին չուելու ատենը՝ Ղևտացիները
վար պիտի առնեն ան, ու խորանին
իջևան ընելու ատենը՝ Ղևտացիները
պիտի կանգնեն ան․ խԵւ անոր մօտե-
ցող օտարականը պիտի մեռցուի։
52 Եւ Իսրայէլի որդիքը իրենց գուն-
դերովը ծամէն մէկը իր բանակին
քովը՝ ու ամէն մէկը իր դրօշակին
53 քովը իջևան պիտի ընեն։ կԲայց
Ղևտացիները վկայութեան խորա-
նին բոլորտիքը պիտի բանակին,
որ Իսրայէլի որդւոցը ժողովքին
վրայ հբարկութիւն չգայ․ յու Ղև-
տացիները վկայութեան խորանին
54 պահպանութիւնը պիտի ընեն։ Եւ
Իսրայէլի որդիքը Տէրոջը Մովսէ-
սին ամէն պատուիրածին պէս ը-
րին․ անանկ ըրին։

ԳԼ․ Բ

1-34 Ամէն մէկ ցեղերուն իջևան ընելուն կարգը։

1 Եւ Տէրը խօսեցաւ Մովսէսին ու
2 Ահարոնին՝ ըսելով․ աԻսրայէլի
որդւոցը ամէն մէկը իր դրօշակին
քովը իրենց հայրերուն տանը նշա-
նովը իջևան պիտի ընեն․ բԺողով-
քի խորանին դիմացը շուրջանակի
իջևան ընեն։

3 Եւ առջևի կողմը՝ դէպ 'ի ա-
րևելք իջևան ընողները՝ Յուդայի
բանակին *զօրքերը ըլլան" իրենց
գունդերուն կարգովը․ և Ամինա-
դաբին որդին գՆաասոնը Յուդայի
4 որդւոցը իշխան պէտք է ըլլայ։ (Եւ
անոր համրուած զօրքը եօթանա-
սունըչորս հազար ․վեց հարիւր
5 հոգի էին։) Եւ անոր քովը իջևան
ընողները Իսաքարի ցեղը պէտք է ըլ-
լայ․ և Սովգարին որդին Նաթանա-
յէլը Իսաքարի որդւոցը իշխան պէտք է
6 ըլլայ։ (Եւ անոր համրուած զօր-
քը յիսունըչորս հազար չորս հա-
7 րիւր հոգի էին։) Եւ Զաբուղո-
նի ցեղը․ և Քեղոնին որդին Եղիա-
բը Զաբուղոնի որդւոցը իշխան պէ-
8 տք է ըլլայ։ (Եւ անոր համրուած
զօրքը յիսունըեօթը հազար չորս
9 հարիւր հոգի էին։ Յուդայի բա-
նակին մէջ համրուածներուն ամէ-
նը իրենց գունդերուն համեմատ՝
հարիւր ութսունըվեց հազար չորս
հարիւր հոգի էին։) դԱսոնք առ-
ջևէն պիտի չուեն։

10 Հարաւային կողմը՝ Ռուբէնի բա-
նակին դրօշակը պէտք է ըլլայ՝ իրենց
գունդերուն կարգովը․ և Ռուբէնի
որդւոցը իշխան՝ Սեդիուրին որդին
11 Եղիսուրը պէտք է ըլլայ։ (Եւ անոր
համրուած զօրքը քառասունըվեց
հազար հինգ հարիւր հոգի էին։)
12 Եւ անոր քովը իջևան ընողները
Շմաւոնի ցեղը պիտի ըլլայ․ ու
Շմաւոնի որդւոցը իշխան՝ Սուրի-
սադային որդին Սաղամիէլը պէտք է
13 ըլլայ։ (Եւ անոր համրուած զօր-
քը յիսունըինը հազար երեք հա-
14 րիւր հոգի էին։) Ու ետքը Գադի
ցեղը․ և Գադի որդւոցը իշխան՝
եՌագուէլին որդին Եղիասափը պէ-
15 տք է ըլլայ։ (Եւ անոր համրուած
զօրքը քառասունըհինգ հազար վեց
16 հարիւր յիսուն հոգի էին։ Ռու-
բէնի բանակին մէջ համրուածնե-
րուն ամէնը իրենց գունդերուն հա-
մեմատ՝ հարիւր յիսունըմէկ հա-
զար չորս հարիւր յիսուն հոգի էին։)
զԵւ երկրորդ ասոնք պիտի չուեն։

17 էԵտքը Ղևտացւոց բանակին հետ՝
բանակներուն մէջտեղը ժողովքի
խորանը պիտի չուէ․ ամէն մարդ
իր տեղը իրենց դրօշակներուն քո-
վը իջևան ըրածնուն պէս պիտի
չուեն։

18 Արևմտեան կողմը Եփրեմի բա-
նակին դրօշակը պէտք է ըլլայ՝ իրենց
գունդերուն կարգովը․ ու Եփրեմի
որդւոցը իշխան՝ Ամիուդին որդին
19 Եղիսաման պէտք է ըլլայ։ (Եւ անոր
համրուած զօրքը քառասուն հազար
20 հինգ հարիւր հոգի էին։) Եւ ա-
նոր քովը Մանասէի ցեղը․ ու Մա-
նասէի որդւոցը իշխան՝ Փադասու-
րին որդին Գամաղիէլը պէտք է ըլլայ։
21 (Եւ անոր համրուած զօրքը եր-
սունըերկու հազար երկու հարիւր
22 հոգի էին։) Ու ետքը Բենիամինի
ցեղը․ և Բենիամինի որդւոցը իշ-
խան՝ Գեդէօնիին որդին Աբիդանը
23 պէտք է ըլլայ։ (Եւ անոր համրուած
զօրքը երսունըհինգ հազար չորս
24 հարիւր հոգի էին։ Եփրեմի բանա-
կին մէջ համրուածներուն ամէնը
իրենց գունդերուն համեմատ՝ հա-
րիւր ութը հազար հարիւր հոգի
էին։) ըԵւ երրորդ ասոնք պիտի
չուեն։

25 Հիւսիսային կողմը՝ Դանի բա-
նակին դրօշակը պէտք է ըլլայ՝ իրենց
գունդերուն կարգովը․ և Դա-
նի որդւոցը իշխան՝ Ամիսադա-

Ն․ Ք․ ԴՌ․ 1490

ա Գլ․ ա․ 52։
բ Յես․ գ․ 4։
* Եբր․ դրօշակը ըլլայ՝
գ Գլ․ ժ․ 14։ Հռութ․ դ․ 20։ ա Մն․ բ․ 10։ Մատ․ ա․ 4։ Ղուկ․ գ․ 32, 33։
դ Գլ․ ժ․ 14։
ե Կամ՝ Դաւուէլին․ Տես Գլ․ ա․ 14։ է․ 42, 47։ ժ․ 20։
զ Գլ․ ժ․ 18։
է Գլ․ ժ․ 17, 21։
ը Գլ․ ժ․ 22։

Ն · ք · գՔ ·
1490

յին որդին Աքիեզերը պէտք ըլ-
26 լայ ։ ( Եւ անոր համրուած զօր-
քը վաթսունուերկու հազար եօ-
27 թը հարիւր հոգի էին ։ ) Եւ ա-
նոր քովը իջեան բնողները Ասե-
րի ցեղը պէտք ըլլայ . ու Ասերի
որդւոցը իշխան՝ Եքրանին որդին
28 Փագիէլը պէտք ըլլայ ։ ( Եւ անոր
համրուած զօրքը քառասունումէկ
հազար հինգ հարիւր հոգի էին ։ )
29 Ու ետքը Նեփթաղիմի ցեղը . ու
Նեփթաղիմի որդւոցը իշխան՝ Ենա-
նին որդին Աքիրէն պէտք ըլլայ ։
30 ( Եւ անոր համրուած զօրքը յի-
սունուիրեք հազար չորս հարիւր
31 հոգի էին ։ Դանի բանակին մէջ համ-
րուածներուն ամէնը՝ հարիւր յի-
սունուեօթը հազար վեց հարիւր
ը Թւ · ժ · 25 ։
հոգի էին ։ ) ըԱսոնք իրենց դրօշակ-
ներովը ամենէն ետևէն պիտի
չուեն ։
32 Իսրայէլի որդւոցմէ իրենց հայրե-
րուն տուներովը համրուածներր ա-
թ Ել · լը · 26 ։ Թւ · ա · 46 ։ ժա · 21 ։
սոնք են . թ բանակներուն մէջ համ-
րուածներուն ամէնը իրենց գունդե-
րուն կարգովը՝ վեց հարիւր իրեք
հազար հինգ հարիւր յիսուն հոգի
ժ Թւ ա · 47 ։
33 էին ։ Բայց ժ Ղևտացիները չհամ-
րուեցան Իսրայէլի որդւոցը հետ ,
ինչպէս որ Տէրը Մովսէսին պա-
34 տուիրեր էր ։ Եւ Իսրայէլի որդի-
քը Տէրոջը Մովսէսին բոլոր պա-
ի Թւ · իդ · 2 · 5 · 6 ։
տուիրածին պէս ըրին . ի այսպէս ի-
րենց դրօշակներովը իջեան բրին , ու
այսպէս անոնք ամէն մէկերնին ի-
րենց տոհմերուն կարգովը և իրենց
հայրերուն տուներովը չուեցին ։

ԳԼ · Գ

1 Ահարոնի որդիքը ։ 5 Խորանին պաշտօնին համար Ղևտացիք քահանաներուն կը տրուին , 11 անդրանկաց տեղը սեպուելով ։ 14 Ղևտացիք կը համրուին իրենց տոհմերովը ։ 21 Գերսոնեանց . 27 Կահաթեանց , 33 Մերարեանց տոհմերը , թիւը և անոնց յանձնուած պահպանութիւնը ։ 38 Մովսէսին ու Ահարոնին իջեան բնելու տեղը՝ ու պահպանութիւնը ։ 40 Ղևտացիք Իսրայէլացւոց անդրանիկներուն փրկանքը կ'ըլլան , 44 ու Ղևտացւոց թիւէն աւելի եղածները ստակով կը փրկուին ։

1491
1 Եւ Ահարոնին ու Մովսէսին ազգա-
բանութիւնը աս է , Տէրոջը
Մովսէսին հետ Սինայ լեռանը վրայ
2 խօսած օրը ։ Եւ Ահարոնին որ-
դւոցը անունները ասոնք են .
ա Ել · զ · 23 ։
ա անդրանիկը Նադաբ և Աբիուդ .
3 Եղիազար ու Իթամար ։ Ասոնք էին
բ Ել · իը · 41 ։ Ղւ · ը ։
Ահարոնին որդւոցը բ քահանանե-
րուն անունները՝ որ օծուած օրհ-
նուած էին քահանայութիւն ընե-
1490
գ Ղւ · ժ · 1 ։ Թւ · իզ · 61 ։ ա Մն · իդ · 2 ։
4 լու ։ գ Եւ Նադաբ ու Աբիուդ Սինայի
անապատին մէջ Տէրոջը առջևը
օտար կրակ մատուցած ատեննին՝
մեռան Տէրոջը առջևը , ու անոնք
որդի չունէին . և Եղիազար ու Ի-
թամար իրենց հօրը Ահարոնին
առջևը քահանայութիւն ըրին ։
5 Եւ Տէրը խօսեցաւ Մովսէսին՝ ը-
6 սելով . լ Ղևիին ցեղը մօտեցուր , լ Թւ · ը · 6 ։ ժը · 2 ։
ու զանոնք Ահարոն քահանային
առջևը կայնեցուր՝ որ անոր սպա-
7 սաւորութիւն ընեն ։ Եւ անոր
պահպանութիւնը՝ ու բոլոր ժողով-
քին պահպանութիւնը ժողովքի
խորանին առջևը պիտի պահեն
8 խ խորանին պաշտօնը ընելով ։ Եւ խ Տես Թւ · ա · 50 ։ ը · 11 · 15 · 24 · 26 ։
ժողովքի խորանին բոլոր կարասի-
ները՝ ու Իսրայէլի որդւոցը պահ-
պանութիւնը պիտի պահեն՝ խո-
9 րանին պաշտօնը ընելով ։ Եւ ծԱ- ծ Թւ · ը · 19 ։ ժը · 6 ։
հարոնին ու անոր որդւոցը պիտի
տաս Ղևտացիները . ասոնք Իսրա-
յէլի որդւոցմէն բոլորովին անոր
10 տրուած են ։ Եւ Ահարոնը ու ա-
նոր որդիները կ իրենց քահանայա- կ Թւ · ժը · 7 ։
կան պաշտօնը կատարելու պիտի
կարգես . հև մօտեցող օտարականը հ Հմր 38 ։ Թւ · ա · 51 ։ ժզ · 40 ։
պիտի մեռցուի ։
11 Եւ Տէրը խօսեցաւ Մովսէսին՝ ը-
12 սելով . Եւ ես ահա Իսրայէլի որ-
դւոցը մէջէն ձ Ղևտացիները առի , ձ Հմր 41 ։ Թւ · ը · 16 ։ ժը · 6 ։
Իսրայէլի որդւոցը մէջ ամէն մօրը
արգանդը բացող անդրանիկին տեղը .
ուստի Ղևտացիները իմս պիտի ըլ-
13 լան ։ Քանզի ղ ամէն անդրանիկը իմս ղ Ել · ժգ · 2 ։ Ղւ · իէ · 26 ։ Թւ · ը · 16 ։ Ղու · բ · 23 ։
է . ճ երբոր Եգիպտոսի երկրին մէջ ճ Ել · ժգ · 12 · 15 ։ Թւ · ը · 17 ։
բոլոր անդրանիկները զարկի , Իսրա-
յէլի մէջ բոլոր անդրանիկները մար-
դէն մինչև անասուն սրբեցի ինծի .
անոնք իմս պիտի ըլլան . ես եմ
Տէրը ։
14 Եւ Տէրը խօսեցաւ Մովսէսին
Սինայի անապատին մէջ՝ ըսելով .
15 Համրէ Ղևիին որդիքը իրենց հար-
ցը տուներուն և իրենց ազգատոհ-
մերուն նայելով . մ մէկ ամսականէն մ Հմր 39 ։ Թւ · իզ · 62 ։
վեր եղող ամէն արուն պիտի համ-
16 րես ։ Եւ Մովսէս Տէրոջը խօսքին
համեմատ համրեց զանոնք՝ ինչպէս
17 որ իրեն պատուիրուեցաւ ։ յ Եւ յ Ծն · խզ · 11 ։ Ել · զ · 16 ։ Թւ · իզ · 57 ։ ա Մն · զ · 1 · 16 ։ իգ · 6 ։
Ղևիին որդիքը իրենց անուններովը
ասոնք էին . Գերսոն և Կահաթ ու
18 Մերարի ։ Եւ Գերսոնի որդւոցը
անունները իրենց տոհմերովը ասոնք
19 են . ն Ղոբենի եւ Սեմէի ։ Եւ Կա- ն Ել · զ · 17 ։
հաթին որդիքը իրենց տոհմերովը՝ շ Ել · զ · 18 ։
շ Ամրամ և Իսահառ , Քեբրոն ու
20 Ոզիէլ էին ։ ո Եւ Մերարիին որ- ո Ել · զ · 19 ։
դիքը իրենց տոհմերովը՝ Մոողի ու
Մուսի էին . Ղևտացւոց տոհմերը
իրենց հարցը տուներուն համեմատ՝
ասոնք են ։
21 Գերսոնէն՝ Ղոբենեանց տոհմը և
Սեմէեանց տոհմը եղաւ . Գերսո-
22 նեանց տոհմերը ասոնք են ։ Ա-
նոնցմէ համրուածները՝ մէկ ամսա-
կանէն վեր եղող բոլոր արուներուն

Ն. Ք. ԴՌ.
1490

թուոյն համեմատ համրուածները՝
եօթը հազար հինգ հարիւր հոգի
23 էին ։ յԳերսոնեանց տոհմերը խո-
րանին ետեւի կողմը դէպ 'ի արեւ-
24 մուտք իջեւան պիտի ընեն ։ Եւ
Գերսոնեանց հօրը տանը իշխանը՝
Լաելի որդին Եղիասափը պիտի ըլ-
25 լայ ։ Եւ ժողովքի խորանին մէջ
ղԳերսոնին որդւոցը պահպանու-
թեանը յանձնուած բաները ասոնք
էին . եխորանը՝ ու զվրանը՝ ա-
նոր ծածկոցը՝ և ժողովքի խո-
26 րանին ըդրանը վարագոյրը , խո-
րանին և սեղանին բոլորտիքը ե-
ղած ւսրահին վարագոյրները , և
օսրահին դրանը վարագոյրը , և
անոր ամէն գործին համար եղած
ւչուանները ։
27 դԵւ Կահաթէն Ամրամեանց տոհ-
մը՝ ու Իսահառեանց տոհմը՝ և
Քեբրոնեանց տոհմը՝ ու Ոզիելեանց
տոհմը եղաւ . Կահաթեանց տոհ-
28 մերը ասոնք են . Մէկ ամսականէն
վեր եղող բոլոր արուները իրենց
թուոյն համեմատ՝ ութը հազար
վեց հարիւր հոգի էին , որ սրբարա-
նին պահպանութիւնը կ'ընէին ։
29 ջԿահաթին որդւոցը տոհմերը խո-
րանին հարաւային կողմը իջեւան
30 պիտի ընեն ։ Եւ Կահաթեանց
տոհմերուն հօրը տանը իշխանը՝
31 Ոզիելի որդին Եղիսափանն էր ։ Եւ
ռանոնց պահպանութեանը յանձ-
նուած բաները ասոնք էին . ստապա-
նակը՝ ու լառաջաւորութեան հացին
սեղանը՝ և տաշտանակը՝ ու րսե-
ղանները՝ և սրբարանին գործիքնե-
րը՝ որոնցմով պաշտօն կ'ընեն , և
ցվարագոյրը՝ ու անոր վերաբերեալ
32 ամէն բաները ։ Եւ Ղեւտացւոց իշ-
խաններուն իշխանը՝ Ահարոն քա-
հանային որդին Եղիազարը պիտի
ըլլայ , որ սրբարանին պահպանու-
թիւնը ընողներուն վրայ վերակա-
ցու պիտի ըլլայ ։
33 Մերարիէն՝ Մոողեանց տոհմը և
Մուսեանց տոհմը եղաւ . ասոնք են
34 Մերարիին տոհմերը ։ Եւ անոնց
համրուածները մէկ ամսականէն վեր
եղող բոլոր արուները իրենց թուոյն
համեմատ՝ վեց հազար երկու հարիւր
35 հոգի էին ։ Եւ Մերարեանց տոհ-
մերուն հօրը տանը իշխանը՝ Աբի-
քելին որդին Սուրիէլն էր . ւասոնք
խորանին հիւսիսային կողմը իջեւան
36 պիտի ընեն ։ Եւ փՄերարիին որ-
դւոցը պահպանութեանը յանձ-
նուած բաները ասոնք էին . խորանին
տախտակները՝ ու անոր նիգերը՝ և
սիւները՝ ու խարիսխները՝ և անոր
բոլոր գործիքները՝ ու անոր վերա-
37 բերեալ ամէն բաները , Եւ շուրջա-
նակի սրահին սիւները՝ անոնց խա-

յ Գլ. ա. 53 ։
ղ Գլ. դ. 24, 25, 26 ։
ե Ել. իե. 9 ։
զ Ել. իզ. 1 ։
է Ել. իզ. 7, 14 ։
ը Ել. իզ. 36 ։
ւ Ել. իէ. 9 ։
օ Ել. իէ. 16 ։
ւ Ել. լե. 18 ։
դ Ա Մն. իզ. 23 ։
ջ Գլ. ա. 53 ։
ռ Գլ. դ. 15 ։
ս Ել. իե. 10 ։
լ Ել. իե. 23 ։
տ Ել. իե. 31 ։
ր Ել. իէ. 1 ։ Լ. 1 ։
ց Ել. իզ. 32 ։
ւ Գլ. ա. 53 ։
փ Գլ. դ. 31, 32 ։

րիսխները՝ և ցիցերը՝ ու անոնց
չուանները ։
38 քԵւ խորանին առջեւի կողմը՝ այս-
ինքն ժողովքի խորանին առջեւը
դէպ 'ի արեւելք իջեւան ընելու պէտ-
քէ՝ Մովսէս ու Ահարոն և անոր
որդիքը պիտի ըլլան , օոր սրբարա-
նին պահպանութիւնը ֆԻսրայէլի
որդւոցը պահպանութեանը համար
պահպանեն . ու աօտարազգի օտա-
39 րականը պիտի մեռցուի ։ բՂեւտա-
ցւոց բոլոր համրուածները՝ որոնք
իրենց տոհմերովը Տէրոջը խօսքին
համեմատ՝ Մովսէս ու Ահարոն
համրեցին , մէկ ամսականէն վեր
եղող բոլոր արուները քսանուերկու
հազար էին ։
40 Եւ Տէրը ըսաւ Մովսէսին . գԻս-
րայէլի որդւոցը մէկ ամսականէն
վեր բոլոր առջինեկ արուները համ-
րէ , ու անոնց անուններուն թիւը
41 առ ։ Եւ Իսրայէլի որդւոցը բո-
լոր առջինեկներուն փոխարէն՝
դՂեւտացիները պիտի առնես ինծի
համար . ես եմ Տէրը . ու Ղեւտա-
ցւոց անասունները՝ Իսրայէլի որ-
դւոցը անասուններուն բոլոր առ-
42 ջինեկներուն տեղը ։ Եւ Մովսէս
համրեց Իսրայէլի որդւոցը բոլոր
առջինեկները՝ ինչպէս որ Տէրը ի-
43 րեն պատուիրեց ։ Եւ բոլոր առ-
ջինեկ արուները իրենց անուննե-
րուն թուոյն համեմատ՝ մէկ ամսա-
կանէն վեր համրուողները քսան-
ուերկու հազար երկու հարիւր եօ-
թանասունուերեք հոգի էին ։
44 Եւ Տէրը խօսեցաւ Մովսէսին՝
45 ըսելով . եԻսրայէլի որդւոցը մէջ ա-
մէն առջինեկներուն տեղը՝ Ղեւտա-
ցիները , և անոնց անասուններուն
տեղը՝ Ղեւտացւոց անասունները
առ , որ Ղեւտացիները իմս ըլլան .
46 ես եմ Տէրը ։ Եւ զՂեւտացւոց
աւելի աւելցած Իսրայէլի որդւոցը
երկու հարիւր եօթանասունուերեք
առջինեկներուն էփրկանք ըլլալու
47 համար , Մարդ գլուխ ըհինգ սիկղ
պիտի առնես . սրբարանին սիկղին
համեմատ պիտի առնես . թՄէկ
48 սիկղը քսան կերատ է ։ Եւ անոնց
մէջ աւելցածներուն փրկանքին
ստակը՝ Ահարոնին ու անոր որ-
49 դւոցը տաս ։ Եւ Մովսէս Ղեւտա-
ցիներով փրկուածներուն աւել-
ցածներէն փրկանքին ստակը առաւ ։
50 Իսրայէլի որդւոցը առջինեկներէն
սրբարանին սիկղին համեմատ՝ ժհա-
զար երեք հարիւր վաթսունուհինգ
51 սիկղ արծաթ առաւ ։ Եւ Մովսէս՝
Տէրոջը խօսքին պէս իփրկուածնե-
րուն ստակը Ահարոնին ու անոր
որդւոցը տուաւ , ինչպէս որ Տէրը
Մովսէսին պատուիրեր էր ։

Ն. Ք. ԴՌ.
1490

ք Գլ. ա. 53 ։
օ Գլ. ժը. 5 ։
ֆ Հմր 7, 8 ։
ա Հմր 10 ։
բ Տես Գլ. իզ. 62 ։
գ Հմր 15 ։
դ Հմր 12, 45 ։
ե Հմր 12, 41 ։
զ Հմր 39, 43 ։
է Ել. ժգ. 13 ։ Գլ. ժը. 15 ։
ը Ղև. իէ. 6 ։ Գլ. ժը. 16 ։
թ Ել. լ. 13 ։ Ղև. իէ. 25 ։ Գլ. ժը. 16 ։ Եզեկ. խե. 12 ։
ժ Հմր 46, 47 ։
ի Հմր 48 ։

Ն. Ք. Ծ.
1490

ԳԼ. Դ

1 Ղեւտացիներուն պաշտօն կատարելու համար որոշուած հասակը · 4 Քահանաները խորանը քակելէն ետեւ՝ Կահաթեանց յանձնուելու բաները ։ 16 Եղիազարին վերակացութեան պաշտօնը ։ 17 Քահանայից ընելու զգուշութիւնները ։ 21 Գերսոնեանց , 29 ու Մերարեանց տանելու բաները ։ 34 Կահաթեանց , 38 Գերսոնեանց , 42 ու Մերարեանց թիւը ։

1 Եւ Տէրը խօսեցաւ Մովսէսին ու
2 Ահարոնին՝ ըսելով . Ղեւիի որ-
դւոցը մէջէն Կահաթին որդւոցը
գումարը առ՝ իրենց տոհմերուն ու
իրենց հարցը տուներուն համեմատ .
[ա] Տե՛ս Գլ. ը. 24 ։ Ա Մն. իգ. 3 , 24 , 27 ։
3 [ա]Երսուն տարեկանէն վեր մինչեւ
յիսուն տարեկանը ժողովքի խո-
րանին մէջ ծառայութիւն ընելու
համար զունդին մէջ ամէն մտնողը
4 համրէ ։ Ժողովքի խորանին մէջ
[բ] Հմր 15 ։
[բ]Կահաթին որդւոցը պաշտօնը՝
[գ] Հմր 19 ։
[գ]ամենասուրբ բաները պիտի ըլլան ։
5 Եւ երբոր բանակը չուելու ըլլայ .
Ահարոնը ու անոր որդիքը պիտի
[դ] Ել. իզ. 31 ։
գան , ու [դ]ծածկոցին վարագոյրը
իջեցնեն , և անով [ե]վկայութեան
[ե] Ել. իե. 10 , 16 ։
6 տապանակը ծածկեն ։ Եւ թէհաշի
մորթերէ ծածկոցը անոր վրայ պի-
տի դնեն . ու անոր վրայ բոլորովին
կապուտակ լաթ մը տարածեն . և
[զ] Ել. իե. 13 ։
[զ]անոր ձողերը պիտի անցընեն ։
[է] Ել. իե. 23 , 29 , 30 ։ Ղև. իդ. 6 , 8 ։
7 Եւ [է]առաջաւորութեան սեղանին
վրայ կապուտակ լաթ մը պիտի
տարածեն . ու անոր վրայ սկու-
տեղները՝ և խնկամանները՝ ու գա-
ւաթները՝ և թափելու նուէր մա-
տուցանելու բաժակները պիտի դը-
նեն . ու հանապազօրեայ հացերը
8 անոր վրայ պիտի ըլլան . Եւ ա-
նոնց վրայ կրկնակի կարմիրէ լաթ
մը պիտի տարածեն , ու թէհաշի
մորթերէ ծածկոցով ծածկեն ան .
և անոր ձողերը պիտի անցընեն ։
9 Եւ կապուտակ լաթ մը պիտի առ-
[ը] Ել. իե. 31 ։
նեն , ու ծածկեն [ը]լոյսի աշտանա-
[թ] Ել. իե. 37 , 38 ։
կը [թ]և անոր ճրագները՝ ու անոր
ունելիները՝ և բազմակալները՝ ու
անոր բոլոր եղի ամանները որոնց-
10 մով կը ծառայեն անոր . Եւ զանի-
կայ իր ամէն գործիքներովը թէ-
հաշի մորթերէ ծածկոցի մը մէջ
պիտի դնեն , ու լծակի մը վրայ
[ժ] Ել. լ. 1 , 3 ։
11 պիտի դնեն ան ։ Եւ [ժ]ոսկի սեղա-
նին վրայ կապուտակ լաթ մը պի-
տի տարածեն , ու թէհաշի մոր-
թերէ ծածկոցով մը ծածկեն ան .
և անոր ձողերը պիտի անցընեն ։
12 Եւ սրբարանին պաշտօնին գործա-
ծուած բոլոր գործիքները պիտի
առնեն , ու կապուտակ լաթի մը
մէջ փաթթեն , և թէհաշի մոր-
թերէ ծածկոցով պիտի ծածկեն
զանիկայ , ու լծակի մը վրայ դնեն ։
13 Եւ ողջակէզի սեղանէն մոխիրները
հանելով՝ անոր վրայ ծիրանեգոյն
14 լաթ տարածեն . Եւ անոր վրայ
պաշտօնին համար գործածուած
անոր բոլոր գործիքները՝ այսինքն
կրակի ամանները՝ մսահանները՝ ու
թիակները՝ և կոնքերը՝ ( սեղանին
բոլոր գործիքները՝ ) ան [illegible] վը-
րայ պիտի դնեն , ու անոր վրայ
թէհաշի մորթերէ ծածկոց մը տա-
րածեն . և անոր ձողերը անցընեն ։
15 Եւ Ահարոն ու անոր որդիքը բա-
նակին չուած ատենը՝ սրբարանը
ու սրբարանին բոլոր կարասիները
[ի] Գլ. է. 9 ։ Ժ. 21 ։ Բ Օր. լա. 9 ։ Բ Թագ. զ. 13 ։ Ա Մն. ժե. 2 , 15 ։
ծածկելը լմնցընեն . ու ետքը [ի]Կա-
հաթին որդիքը զանոնք վերցնելու
գան . [լ]Բայց սուրբ բաներու պիտի
չդպչին՝ որ չմեռնին . [խ]Կահաթին
որդւոցը բեռները ասոնք պիտի ըլ-
լան ժողովքի խորանին մէջ ։
[լ] Բ Թագ. զ. 6 , 7 ։ Ա Մն. ժգ. 9 , 10 ։
16 Եւ Ահարոն քահանային որդին
[խ] Գլ. գ. 31 ։
Եղիազարը [ծ]լոյսի եղին՝ ու [կ]անու-
[ծ] Ել. իե. 6 ։ Ղև. իդ. 2 ։
շահոտ խունկին՝ և [հ]հանապազ-
օրեայ հացի ընծային՝ ու [ձ]օծման
[կ] Ել. լ. 34 ։
եղին վրայ վերակացու պիտի ըլլայ .
[հ] Ել. իթ. 40 ։
և բոլոր խորանին ու անոր մէջի ա-
[ձ] Ել. լ. 23 , [illegible]
մէն բաներուն , սրբարանին ու ա-
նոր կարասիներուն վրայ վերակա-
ցու ըլլայ ։
17 Եւ Տէրը խօսեցաւ Մովսէսին ու
18 Ահարոնին՝ ըսելով . Ղեւտացւոց մէ-
ջէն Կահաթեանց տոհմերուն ցեղը
19 մի կորսնցընէք . Բայց անոնց ա-
[ղ] Հմր 4 ։
սանկ ըրէք՝ որ [ղ]ամենասուրբ բանե-
րուն մօտեցած ատեննին ողջ մնան
ու չմեռնին . Ահարոնը ու իր որդի-
քը պիտի գան , ու անոնց ամէն մէ-
կուն իր պաշտօնը ու իր բեռը որո-
[ճ] Տե՛ս Ել. ժթ. 21 ։ Ա Թագ. զ. 19 ։
20 շեն ։ [ճ]Ու երբոր սուրբ բաները կը
ծածկեն , անոնք տեսնելու համար
ներս պիտի չմտնեն՝ որ չմեռնին ։
21 Եւ Տէրը խօսեցաւ Մովսէսին ը-
22 սելով . Նաև Գերսոնի որդւոցը
գումարը առ՝ իրենց հարցը տունե-
րուն ու իրենց տոհմերուն համե-
[մ] Հմր 3 ։
23 մատ . [մ]Երսուն տարեկանէն վեր
մինչեւ յիսուն տարեկանը՝ ժողովքի
խորանին մէջ ծառայութիւն ընելու
համար՝ զունդին մէջ ամէն մտնող-
24 ները պիտի համրես ։ Գերսոնեանց
տոհմերուն ծառայելու ու բեռ վեր-
[յ] Գլ. գ. 25 , 26 ։
25 ցնելու պաշտօնը աս է . [յ]Անոնք
պիտի վերցնեն խորանին վարա-
գոյրները՝ ու ժողովքի խորանը՝ ա-
նոր ծածկոցը՝ ու անոր վրայի թէ-
հաշի ծածկոցը՝ և ժողովքի խորա-
26 նին դրանը վարագոյրը . Եւ խորա-
նին ու սեղանին բոլորտիքը եղած
սրահին վարագոյրները՝ ու սրահը
մտնելու դրանը վարագոյրը՝ ու ա-
նոնց չուանները՝ և անոնց պաշտօ-
նին բոլոր գործիքները պիտի վեր-
ցնեն . ու ասոնց հարկաւոր եղած
բոլոր սպասաւորութիւնները պիտի
27 ընեն ։ Գերսոնեանց որդւոցը բոլոր

Ն. Ք. ՉՔ 1490

պաշտօնը՝ իրենց ամէն բեռներուն
ու իրենց ամէն պաշտօններուն հա-
մար՝ Ահարոնին ու անոր որդւոցը
հրամանովը պիտի ըլլայ. և անոնց
բոլոր բեռները անոնց պահպանու-
28 թեանը յանձնէք ։ Գերսոնեանց
որդւոցը տոհմերուն պաշտօնը աս
պիտի ըլլայ ժողովքի խորանին մէջ.
և անոնց պահպանութիւնը Ահարոն
քահանային որդւոյն Իթամարին
ձեռքին տակը պիտի ըլլայ ։
29 Մերարիի որդիքն ալ պիտի համ-
րես. իրենց տոհմերուն ու իրենց
ՙՀմր 8. 30 հարցը տուներուն համեմատ. ՙԵր-
սուն տարեկանէն վեր մինչև յիսուն
տարեկանը՝ ժողովքի խորանին ծա-
ռայութիւնը ընելու համար գուն-
դին մէջ ամէն մտնողները համրես ։
31 Եւ ժողովքի խորանին մէջ անոնց
ամէն պաշտօններուն համեմատ՝
ՙԳւ. Գ. 36. 87. ՙանոնց բեռներուն պահպանու-
թիւնը աս է. ՙխորանին տախտակ-
ՙԵւ. Իզ. 15. ները, ու անոր նիգերը և անոր
32 սիւները՝ ու խարիսխները, Եւ
շուրջանակի սրահին սիւները ու
անոնց խարիսխները և ցիցերը ու
չուանները՝ անոնց ամէն գործիք-
ներովը և անոնց ամէն պաշտօ-
նովը. անոնց բեռներուն պահպա-
ՙԵւ. Լա. 21. նութեանը ՙգործիքները անուն-
ներովը պիտի յանձնէք անոնց.
33 Աս է Մերարիի որդւոցը տոհմերուն
պաշտօնը ժողովքի խորանին մէջ՝
իրենց բոլոր պաշտօններուն համե-
մատ Ահարոն քահանային որդւոյն
Իթամարին ձեռքին տակը.
ՙՀմր 2. 34 ՙԵւ Մովսէս ու Ահարոն և ժո-
ղովքին իշխանները համրեցին Կա-
հաթեանց որդիները անոնց տոհմե-
րուն ու անոնց հարցը տուներուն
35 համեմատ. Երսուն տարեկանէն վեր
մինչև յիսուն տարեկանը՝ ժողովքի
խորանին մէջ ծառայութիւն ընելու
համար գունդին մէջ ամէն մտնող-
36 ները. Ու անոնց համրուածները ի-
րենց տոհմերովը երկու հազար եօթը
37 հարիւր յիսուն հոգի էին ։ Ասոնք
էն ժողովքի խորանին բոլոր ծառա-
յութիւնը ընող Կահաթեանց տոհ-
մերուն համրուածները. որ Մովսէս
ու Ահարոն համրեցին. ինչպէս որ
Տէրը Մովսէսին ձեռքովը պատուի-
րեր էր.
38 Եւ Գերսոնի որդւոցը համրուած-
ները իրենց տոհմերուն ու իրենց
39 հարցը տուներուն համեմատ. Եր-
սուն տարեկանէն վեր մինչև յի-
սուն տարեկանը՝ ժողովքի խորա-
նին մէջ ծառայութիւն ընելու հա-
մար գունդին մէջ ամէն մտնողները
40 համրուեցան. Եւ անոնց համրուած-
ները իրենց տոհմերուն ու իրենց
հարցը տուներուն համեմատ՝ երկու
հազար վեց հարիւր երսուն հոգի
41 էին ։ ՙԱսոնք են ժողովքի խորա-
նին մէջ բոլոր ծառայութիւն ընող
Գերսոնի որդւոցը տոհմերէն համ-
րուածները, որ Մովսէս ու Ահարոն
համրեցին՝ Տէրոջը պատուիրածին
պէս ։ ՙՀմր 22.
42 Եւ Մերարիի որդւոցը տոհմե-
րուն համրուածները իրենց տոհմե-
րուն ու իրենց հարցը տուներուն
43 համեմատ, Երսուն տարեկանէն վեր
մինչև յիսուն տարեկանը՝ ժողովքի
խորանին մէջ ծառայութիւն ընե-
լու համար գունդին մէջ ամէն մտ-
44 նողները համրուեցան, Եւ անոնց
համրուածները իրենց տոհմերովը՝
իրեք հազար երկու հարիւր հոգի
45 էին ։ Ասոնք են Մերարիի որդւո-
ցը տոհմերուն համրուածները, որ
Մովսէս ու Ահարոն համրեցին,
ՙինչպէս որ Տէրը պատուիրեր էր ՙՀմր 29.
Մովսէսին ձեռքովը.
46 Ղևտացւոց բոլոր համրուածները
որ Մովսէս ու Ահարոն և Իսրայէլի
իշխանները համրեցին իրենց տոհ-
մերուն ու իրենց հարցը տուներուն
47 համեմատ, ՙԵրսուն տարեկանէն ՙՀմր 3. 23 30.
վեր մինչև յիսուն տարեկանը՝ ժո-
ղովքի խորանին մէջ պաշտօնը ու
բեռ կրելու ծառայութիւնը ընելու
48 ամէն մտնողները, Այսինքն անոնց
համրուածները ութը հազար հինգ
49 հարիւր ութսուն հոգի էին. Ա-
նոնք Տէրոջը պատուիրածին պէս
համրուեցան Մովսէսին ձեռքովը.
ՙամէն մէկը իր պաշտօնին ու իր ՙՀմր 15. 24. 31.
բեռին նայելով. այսպէս համրուե-
ցան անոնք, ՙինչպէս որ Տէրը ՙՀմր 1. 21.
պատուիրեց Մովսէսին ։

## ԳԼ. Ե

1 Անմաքուր մարդիկները բանակէն դուրս կը ձգուին. 5 Վնասի մը փոխարէն հատուցումը. 11 Երկան մը իր կնկանը վրայով ունեցած կասկածին համար ընելու փորձը ։

1 Եւ Տէրը խօսեցաւ Մովսէսին ը-
2 սելով. Հրաման ըրէ Իսրայէլի
որդւոցը՝ որ բանակէն դուրս ձգեն
ամէն ՙբորոտը՝ և ամէն ՙծորում ՙՂև ԺԳ. 46 Գւ ԺԲ 14.
ունեցողը ու ՙմեռելէ մը ամէն ան- ՙՂև ԺԵ 2.
3 մաքուր եղողը. Արուն ալ էգն ալ
դուրս ձգեցէք. բանակէն դուրս
պիտի ձգէք անոնք, որ չպղծեն ի-
րենց բանակները՝ ՙորոնց մէջտեղը ՙՂև. Իա 1. Գւ. Թ. 6, 10. ԺԹ. 11, 13. Լա 19.
4 ես կը բնակիմ ։ Եւ Իսրայէլի որ-
դիքը այնպէս ըրին, ու բանակէն ՙՂև Իզ 11, 12. Բ Կոր Զ. 16.
դուրս ձգեցին զանոնք. ինչպէս որ
Տէրը Մովսէսին խօսեցաւ, անանկ
ըրին Իսրայէլի որդիքը ։
5 Եւ Տէրը խօսեցաւ Մովսէսին ը-
6 սելով. Խօսէ Իսրայէլի որդւոցը.
ՙԵրբոր մարդ մը կամ կնիկ մը մար- ՙՂև Զ 3.
դու գործած մեղքերէն մէկը գործե-

Ն. Ք. ԴՔ. 1490

լով՝ Տէրոջը դէմ մեղանչէ , ու ատ
7 անձը յանցաւոր ըլլայ , [ա] Ան ատե-
նը իր ըրած մեղքը պիտի խոստո-
վանի , և անիկայ իր ըրած վնասը
[բ] լման պիտի հատուցանէ , ու ա-
նոր վրայ հինգերորդ մաս մը աւել-
ցընէ , ու զանիկայ վնասը քաշողին
8 պիտի տայ ։ Եւ թէ որ ան [գ] վնա-
սուող մարդուն մէկ ազգականն ալ
չըլլայ , որուն այս վնասը հատու-
ցուի , ան ատենը՝ եղած վնասը Տէրո-
ջը հատուցուելով՝ քահանային պէ-
տք ըլլայ , բաց 'ի քաւութեան
խոյէն , որով ան յանցաւոր մար-
դուն համար քաւութիւն պիտի
ըլլայ ։
9 Եւ Իսրայէլի որդւոցը բոլոր սուրբ
բաներուն ամէն [դ] ընծան որ կը բե-
րեն քահանային , անոր պիտի ըլ-
10 լայ ։ Եւ ամէն մէկուն սուրբ բա-
ները անոր պիտի ըլլան . ամէն
մարդ ինչ որ տայ քահանային ,
[ե] անոր ըլլայ ։
11 Եւ Տէրը խօսեցաւ Մովսէսին՝ ը-
12 սելով . Խօսէ Իսրայէլի որդւոցը՝
ու ըսէ անոնց . Թէ որ մարդու մը
կնիկը խոտորի՝ ու անոր անհաւա-
13 տարմութիւն ընէ , Եւ մէկը [զ] անոր
հետ պառկելով՝ զուգաւորի , ու
անոր էրիկը տեսած չըլլալով՝ բանը
գաղտուկ մնայ , և անոր պղծուած
ատենը՝ տեսնող մը չըլլայ , ու կնի-
14 կը չբռնուի , Եւ էրկանը վրայ նա-
խանձաւորութեան ոգի գալով՝ իր
կնկանը պղծուելուն համար նա-
խանձի . կամ կնիկը պղծուած
չըլլալով՝ էրկանը վրայ նախանձա-
ւորութեան ոգի գայ՝ ու նախան-
15 ձի , Ան ատենը ան մարդը իր
կնիկը քահանային պիտի բերէ ,
և անոր ընծային համար՝ գարիի
ալիւրէն արդուին տասներորդ բա-
ժինը պիտի բերէ . եղ պիտի չը-
թափէ անոր վրան՝ ոչ ալ կնդը-
րուկ դնէ վրան . ինչու որ նախան-
ձաւորութեան ընծայ մըն է ան .
յիշատակի ընծայ՝ [է] որ մեղքը կը
16 յիշատակէ ։ Եւ քահանան կնիկը
պիտի մօտեցընէ , ու Տէրոջը առջևը
17 կայնեցընէ ։ Եւ քահանան հողէ
ամանով սուրբ ջուր պիտի առնէ .
ու քահանան խորանին յատակը ե-
ղած հողէն պիտի առնէ , և ջուրին
18 մէջը դնէ ։ Եւ քահանան Տէրոջը
առջևը պիտի կայնեցընէ կնիկը , ու
կնկանը գլուխը բանայ , և յիշա-
տակի ընծան՝ այսինքն նախան-
ձաւորութեան ընծան անոր ձեռքը
պիտի տայ . ու անէծքին լեղի ջուրը
քահանան իր ձեռքը պիտի ունե-
19 նայ . Եւ քահանան անոր երդում
ընել պիտի տայ , ու ըսէ կնկանը .
Թէ որ մարդ մը քեզի հետ չպառ-
կեցաւ , և թէ որ քու էրկանդ ան-
հաւատարմութիւն ընելով չպղը-
ծուեցար , անէծքին աս լեղի ջուրը
20 քեզի վնաս մը չընէ . Բայց թէ որ
քու էրկանդ անհաւատարմութիւն
ընելով՝ պղծուեցար , և քու էրիկէդ
զատ ուրիշ մարդ մը քեզի հետ
21 պառկեցաւ , (Ան ատենը քահա-
նան կնկանը անէծքի երդում ը-
նել պիտի տայ , և քահանան
կնկանը պիտի ըսէ .) [ը] Տէրը քեզ
քու ժողովուրդիդ մէջտեղը՝ ա-
նէծքի ու երդումի համար պիտի
դնէ , երբոր Տէրը քու զիստդ փտե-
22 ցընէ՝ ու քու փորդ ուռեցընէ . Եւ
աս անէծքին ջուրը [թ] քու աղիքնե-
րուդ մէջ պիտի երթայ , որ քու
փորդ ուռեցընէ , ու քու զիստդ
փտեցընէ . [ժ] և կնիկը պիտի ըսէ .
23 Ամէն՝ ամէն ։ Եւ քահանան աս
անէծքները գիրքի մը մէջ պիտի
գրէ , ու ան լեղի ջրովը պիտի
24 աւրէ ։ Եւ անէծքին լեղի ջուրը
ան կնկանը պիտի խմցընէ . ու
անէծքին լեղի ջուրը անոր ներսի
դին պիտի երթայ՝ լեղի ըլլալու
25 համար ։ Եւ քահանան կնկանը
ձեռքէն նախանձաւորութեան ըն-
ծան պիտի առնէ , ու Տէրոջը առ-
ջևը [ի] երերցընէ ընծան , և սեղանին
26 մօտեցընէ ան ։ [լ] Եւ քահանան ըն-
ծայէն՝ իր ձեռքը լեցուն պիտի առ-
նէ յիշատակի համար , ու սեղա-
նին վրայ պիտի այրէ ան . ու ետ-
քը ան ջուրը կնկանը պիտի խմցը-
27 նէ ։ Եւ ջուրը անոր խմցնելէն
ետև՝ թէ որ անիկայ պղծուած է ,
ու իր էրկանը անհաւատարմու-
թիւն ըրած է , անէծքին ջուրը
լեղի ըլլալով՝ երբոր մտնէ անոր
ներսի դին , անոր փորը պիտի ու-
ռենայ , ու անոր զիստը * փտի , և
կնիկը [ժա] իր ժողովուրդին մէջը անի-
28 ծեալ պիտի ըլլայ ։ Իսկ թէ որ կնի-
կը պղծուած չըլլալով՝ մաքուր է ,
վնաս պիտի չկրէ , ու զաւակ պիտի
29 ծնանի ։ Նախանձաւորութեան
օրէնքը աս է , երբոր կնիկ մը [ժբ] իր
էրկանը անհաւատարմութիւն ընե-
30 լով՝ պղծուի , կամ երբոր մարդու
մը վրայ նախանձաւորութեան ոգի
գայ՝ ու իր կնկանը վրայ նախանձի ,
Տէրոջը առջևը պիտի կայնեցընէ
կնիկը , և քահանան կատարէ աս
31 բոլոր օրէնքը անոր վրայ . Եւ ան
մարդը ազատ պիտի ըլլայ յանցան-
քէն , և կնիկը [ժգ] իր յանցանքին
պատիժը պիտի կրէ ։

## ԳԼ. Զ

1 Ուխտաւորներուն կանոնը ։ 22 Ժողովուրդը օրհնելու կերպը ։

1 Եւ Տէրը խօսեցաւ Մովսէսին՝ ըսե-
2 լով . Խօսէ՝ Իսրայէլի որդւոցը՝

[ա] Ղև. ե. 5, իզ. 40, Յես. է. 19։
[բ] Ղև. զ. 5։
[գ] Ղև. զ. 6, 7, է. 7։
[դ] Ել. իթ. 28, Ղև. զ. 17, 18, 26, է. 6, 7, 9, 10, 14, Գլ. ժը. 8, 9, 19, Բ Օր. ժը. 3, 4, Եզեկ. խդ. 29, 30։
[ե] Ղև. ժ. 13։
[զ] Ղև. ժը. 20։
[է] Գ Թագ. ժէ. 18, Եզեկ. իթ. 16։
[ը] Յես. զ. 26, Ա Թագ. ժդ. 24, Նէեմ. ժ. 29, Երեմ. իթ. 22։
[թ] Սաղ. ծթ. 18։
[ժ] Բ Օր. իէ. 15։
[ի] Ղև. ը. 27։
[լ] Ղև. բ. 2, 9։
* Եբր. Խո-նայ,
[ժա] Բ Օր. իը. 37, Սաղ. ձգ. 9, 11, Երեմ. իդ. 9, իթ. 18, 22, խբ. 18, Զաք. ը. 13,
[ժբ] Հմր 19։
[ժգ] Ղև. ի. 17, 19, 20։

Ն. Ք. ԳՔ.
1490

Ղև. ԻԷ. 2 ։ Դատ. ԺԳ. 5 ։ Գործ. ԻԱ. 23 ։ Հռով. Ա. 1 ։
Ամով. Բ. 12 ։ Ղուկ. Ա. 15 ։
Դատ. ԺԳ. 5 ։ ԺԶ. 17 ։ Ա Թագ. Ա. 11 ։
Ղև. ԻԱ. 11 ։ Գլ. ԺԹ. 11, 16 ։
Ղև. ԻԱ. 1, 2, 11 ։ Գլ. Թ. 6 ։
*Եբր. Նուիրուիլը
Գոր. ԺԸ. 18 ։ ԻԱ. 24 ։
Ղև. Ե. 7 ։ ԺԴ. 22 ։ ԺԵ. 14, 29 ։
Ղև. Ե. 6 ։
Գոր. ԻԱ. 26 ։
Ղև. Դ. 2, 27, 32 ։
Ղև. Գ. 6 ։
Ղև. Բ. 4 ։
Ել. ԻԹ. 2 ։
Գլ. ԺԵ. 5, 7, 10 ։

ու ըսէ անոնց . Թէ որ մարդ մը
կամ կնիկ մը ինքզինքը Տէրոջը
նուիրելու համար ուխտաւորի մեծ
3 ուխտ ընելու ըլլայ . Գինիէն և
օղիէն պիտի զգուշանայ . գինիի
քացախ կամ օղիի քացախ պիտի
չխմէ , և խաղողի օշարակ չխմէ ,
ու խաղող կամ չամիչ պիտի չու-
4 տէ ։ Ինքզինքը նուիրելուն բո-
լոր օրերը՝ որթէն եղած բան մը
պիտի չուտէ , կուտերէն մինչև
5 կեղևը ։ Ինքզինքը նուիրելու ուխ-
տին բոլոր օրերը՝ իր գլխուն ա-
ծելի չդպցընէ . մինչև ինքզինքը
Տէրոջը նուիրած օրերուն լմննալը՝
ինքը սուրբ պիտի ըլլայ . և իր
գլխու մազերուն վարսը թող տայ
6 որ աճի ։ Ինքզինքը Տէրոջը նուի-
րած բոլոր օրերը՝ մեռած մարմի-
7 նի մը պիտի չմօտենայ . Իր հօ-
րը համար կամ մօրը համար՝ իր
եղբօրը կամ իր քրոջը համար՝ ինք-
զինքը պիտի չպղծէ , երբոր անոնք
մեռնին . ինչու որ իր Աստուծոյն
8 *ուխտը իր գլխուն վրան է ։ Ինք-
զինքը նուիրելուն բոլոր օրերը ինքը
9 սուրբ է Տէրոջը ։ Եւ թէ որ իր
քովը յանկարծ մարդ մը մեռնի , ու
իր նուիրած գլուխը պղծուի , իր
մաքրուելու օրը իր գլուխը պիտի
ածիլէ . եօթներորդ օրը ածիլէ ան .
10 Եւ ութերորդ օրը ժողովքի խո-
րանին դուռը երկու տատրակ կամ
աղաւնիի երկու ձագ պիտի բերէ
11 քահանային ։ Եւ քահանան մէկը
մեղքի պատարագ՝ ու մէկալը ողջա-
կէզ պիտի մատուցանէ , և մեռելին
պատճառովը եղած մեղքին համար
քաւութիւն պիտի ընէ անոր . ու
նոյն օրը պիտի սրբէ անոր գլուխը ։
12 Եւ իր ուխտին օրերը Տէրոջը պիտի
նուիրէ , ու յանցանքի պատարագի
համար մէկ տարեկան գառնուկ մը
պիտի բերէ . և առջի օրերը պիտի
չհամրուին , ինչու որ իր ուխտը
պղծուեցաւ ։
13 Եւ ուխտաւորին օրէնքը աս է .
Երբոր ինքզինքը նուիրելուն օրերը
լմննայ , անիկայ ժողովքի խորա-
14 նին դուռը պիտի բերուի . Եւ իր
զոհը Տէրոջը պիտի մատուցանէ ,
մէկ տարեկան անարատ արու գառ-
նուկ մը ողջակէզի համար , ու մէկ
տարեկան անարատ էգ գառնուկ մը
մեղքի պատարագի համար , և մէկ
անարատ խոյ մը խաղաղութեան
15 զոհի համար . Եւ սակառ մը նըշա-
րակ ալիւրէ եղով շաղուած ան-
խմոր շօթեր , ու եղով օծուած
անխմոր լաւաշներ , և անոնց հացի
ընծան ու թափելու նուէրը պիտի
16 մատուցանէ ։ Եւ քահանան անոր
մեղքի պատարագը ու անոր ողջա-
կէզը Տէրոջը առջևը մօտեցընելով՝
17 պիտի մատուցանէ ։ Եւ խոյը՝ խա-
ղաղութեան զոհ պիտի մատուցանէ
Տէրոջը՝ անխմոր հացին սակառովը .
ու քահանան անոր հացի ընծան ու
թափելու նուէրը պիտի մատուցա-
18 նէ ։ Եւ ուխտաւորը իր նուիրած
գլուխը պիտի ածիլէ ժողովքի խո-
րանին դուռը . ու իր նուիրած գլը-
խուն մազը պիտի առնէ՝ և խաղա-
ղութեան զոհին տակը եղած կրա-
19 կին մէջը դնէ ։ Եւ քահանան խո-
յէն՝ եփած թևը , և սակառէն՝
մէկ անխմոր շօթ ու մէկ անխմոր
լաւաշ պիտի առնէ , և ուխտաւորին
ձեռքերուն վրայ դնէ՝ մազերը ա-
20 ծիլուելէն ետքը . Եւ քահանան ե-
րերցընելու ընծայ պիտի մատու-
ցանէ զանոնք Տէրոջը առջևը .
Ասոնք երերցընելու երբուծով՝ ու
բարձրացընելու զիստով՝ քահանա-
յին համար սուրբ են . և անկէ
ետև ուխտաւորը գինի թող խմէ ։
21 Ուխտաւորի մը ու անոր նուիրուե-
լուն համար Տէրոջը խոստացած իր
ընծային օրէնքը աս է , իր ձեռքը
հասածէն ՚ի զատ . անիկայ իր ը-
րած խոստմունքը իր նուիրուելուն
օրէնքովը պիտի կատարէ ։
22 Եւ Տէրը խօսեցաւ Մովսէսին՝ ը-
23 սելով . Խօսէ Ահարոնին ու անոր
որդւոցը՝ և ըսէ . Այսպէս պիտի
օրհնէք Իսրայէլի որդիքը՝ ըսելով
24 անոնց . Տէրը օրհնէ քեզ , և պահէ
25 քեզ . Տէրը պայծառացընէ իր ե-
րեսը քու վրադ , ու ողորմի քեզի .
26 Տէրը իր երեսը քու վրադ վերցընէ ,
27 և խաղաղութիւն տայ քեզի ։ Եւ
իմ անունս Իսրայէլի որդւոցը վրայ
պիտի դնեն , ու ես պիտի օրհնեմ
զանոնք ։

## ԳԼ. Է

1 Իշխաններուն ընծաները խորանին նուիրման հանդէսին համար ։ 10 Սեղանին նուիրման հանդէսին համար մատուցուած ընծաները ։ 89 Աստուած քաւութիւնին վրայէն Մովսէսին հետ կը խօսի ։

1 Եւ եղաւ որ՝ ան օրը որ Մովսէս
լմնցուց խորանը կանգնելը , և
զանիկայ ու անոր բոլոր անօթները
օծեց ու սրբեց , և սեղանը ու անոր
բոլոր գործիքները օծեց . ու զանոնք
2 սրբեց , Ան ատենը Իսրայէլի իշ-
խանները՝ իրենց հայրերուն տանը
գլուխները՝ [illegible] համրուե-
լուն վրայ վերակացու եղող ցեղե-
րուն իշխանները ընծաներ տուին ։
3 Եւ բերին իրենց ընծաները Տէրոջը
առջևը . վեց ծածկուած սայլեր՝ և
տասուերկու եզներ . ամէն երկու
իշխանները մէկ սայլ և ամէն մէկը
մէկ մէկ եզ և մօտեցուցին զանոնք
4 խորանին առջևը ։ Եւ Տէրը խօ-

Ն. Ք. ԳՔ.
1490

Գոր. ԻԱ. 24 ։
Ա Թագ. Բ. 15 ։
Ել. ԻԹ. 23, 24 ։
Ել. ԻԹ. 27, 28 ։
Ղև. Թ. 22 ։ Ա Մն. ԻԳ. 13 ։
Սաղ. ՃԻԱ. 7 ։ Յօհ. ԺԷ. 11 ։
Սաղ. Լ. 16 ։ ԿԷ. 1 ։ Հ. 3, 7, 19 ։ ՃԺԹ. 135 ։ Դան. Թ. 17 ։
Ծն. ԽԳ. 29 ։
Սաղ. Դ. 6 ։ Յօհ. ԺԴ. 27 ։ Բ Թես. Գ. 16 ։
Բ Օր. ԻԸ. 10 ։ Բ Մն. Է. 14 ։ Ես. ԽԳ. 7 ։ Դան. Թ. 18, 19 ։
Սաղ. ՃԺԵ. 12 ։
Ել. Խ. 18 ։ Ղև. Ը. 10, 11 ։
Գլ. Ա. 4, Ճ ։

Ն․Ք․ԴՔ․
1490

5 սեցաւ Մովսէսին՝ ըսելով․ Անոնցմէ
առ՝ ու Ղեւտացւոց տուր զանոնք՝ ա֊
մէն մէկուն իր պաշտօնին նայելով,
որ ժողովքի խորանին պաշտօնին
6 մէջ գործածուին ։ Եւ Մովսէս ա֊
ռաւ սայլերը ու եզները, ու զանոնք
7 Ղեւտացւոց տուաւ ։ Երկու սայլը
գ Գլ․ դ․ 25։
ու չորս եզը գ Գերսոնի որդւոցը
տուաւ՝ անոնց պաշտօնին նայելով․
դ Գլ․ դ․ 31։
ե Գլ․ դ․ 28, 33։
8 դ Եւ չորս սայլը ու ութը եզը Մե֊
րարիի որդւոցը տուաւ, ե Ահարոն
քահանային որդւոյն Իթամարին
վերակացութեամբը եղած անոնց
9 պաշտօնին նայելով ։ Բայց Կա֊
հաթի որդւոցը չտուաւ․ ինչու որ
զ Գլ․ դ․ 15։
զ Նսրբարանին պաշտօնը անոնց վրայ
է Գլ․ դ․ 6, 8, 10, 12, 14։ բ Թագ․ զ․ 13։
ըլլալով, է իրենց ուսերովը պիտի
վերցընէին ։
10 Եւ սեղանին օծուած օրը՝ ը անոր
ը Տես ք Օր․ ի․ 5։ գ Թագ․ ը․ 63։ բ Մն․ է․ 5, 9։ Եզր․ զ․ 16։ Նեեմ․ ժբ․ 27։ Սաղ․ Լ․ ին վերնագիրը։
նուիրման հանդէսին համար իշ֊
խանները ընծաներ տուին․ և իշ֊
խանները իրենց ընծաները սեղանին
11 առջևը մատուցին ։ Եւ Տէրը ըսաւ
Մովսէսին․ Սեղանին նուիրման
հանդէսին համար՝ ամէն մէկ իշ֊
խան մէյմէկ օր իրենց ընծաները
մատուցանեն ։
12 Եւ առաջին օրը իր ընծան մա֊
տուցանողը՝ Յուդայի ցեղին իշխանը
թ Գլ․ բ․ 3։
թ Ամինադաբին որդին Նաասոնն էր ։
ժ Ել․ Լ․ 13։
13 Եւ •• էր անոր ընծան․ ժ սրբարա֊
նին սիկղին համեմատ՝ հարիւր եր֊
սուն սիկղէ մէկ արծաթ սկուտեղ,
եօթանասուն սիկղէ մէկ արծաթ
ի Ղև․ բ․ 1։
կոնք, երկուքն ալ լեցուն էին ի հա֊
ցի ընծայի համար եղով շաղուած
14 բարակ ալիւրով, Տասը սիկղ ոսկիէ
լ Ել․ Լ․ 34։
մէկ խնկաման լ խունկով լեցուն,
խ Ղև․ ա․ 2։
15 խ Մէկ զուարակ՝ մէկ խոյ՝ •• մէկ
տարեկան մէկ գառն ողջակէզի հա֊
ծ Ղև․ դ․ 23։
16 մար, Այծերէն մէկ նոխազ ծ մեղ֊
կ Ղև․ գ․ 1։
17 քի պատարագի համար, Եւ կ խա֊
ղաղութեան զոհի համար երկու
արջառ՝ հինգ խոյ՝ հինգ նոխազ՝ և
հինգ հատ մէկ տարեկան գառինք․
Ամինադաբին որդւոյն Նաասոնին
ընծան աս էր ։
18 Երկրորդ օրը մատուցանողը՝ Ի֊
սաքարի իշխանը Սովգարին որդին
19 Նաթանայէլն էր ։ Անոր մատու֊
ցած ընծան •• էր․ սրբարանին
սիկղին համեմատ՝ հարիւր երսուն
սիկղէ մէկ արծաթ սկուտեղ, եօ֊
թանասուն սիկղէ մէկ արծաթ
կոնք, երկուքն ալ լեցուն էին հացի
ընծայի համար եղով շաղուած
20 բարակ ալիւրով, Տասը սիկղ ոսկիէ
մէկ խնկաման խունկով լեցուն,
21 Մէկ զուարակ՝ մէկ խոյ՝ և մէկ տա֊
րեկան մէկ գառն ողջակէզի համար,
22 Այծերէն մէկ նոխազ մեղքի պա֊
23 տարագի համար, Եւ խաղաղու֊
թեան զոհի համար երկու արջառ՝
հինգ խոյ՝ հինգ նոխազ՝ և հինգ
հատ մէկ տարեկան գառինք․ Սով֊
գարին որդւոյն Նաթանայէլին ըն֊
ծան աս էր ։
24 Երրորդ օրը մատուցանողը՝ Զա֊
բուղոնի որդւոց իշխանը Քեղոնին
25 որդին Եղիաբն էր ։ Անոր ընծան
•• էր․ սրբարանին սիկղին համե֊
մատ՝ հարիւր երսուն սիկղէ մէկ
արծաթ սկուտեղ, եօթանասուն
սիկղէ մէկ արծաթ կոնք, երկուքն
ալ լեցուն էին հացի ընծայի համար
եղով շաղուած բարակ ալիւրով,
26 Տասը սիկղ ոսկիէ մէկ խնկաման
27 խունկով լեցուն, Մէկ զուարակ՝
մէկ խոյ՝ և մէկ տարեկան մէկ գառն
28 ողջակէզի համար, Այծերէն մէկ
նոխազ մեղքի պատարագի համար,
29 Եւ խաղաղութեան զոհի համար
երկու արջառ՝ հինգ խոյ՝ հինգ նո֊
խազ՝ և հինգ հատ մէկ տարեկան
գառինք․ Քեղոնին որդւոյն Եղիա֊
բին ընծան աս էր ։
30 Չորրորդ օրը մատուցանողը՝ Ռու֊
բէնի որդւոց իշխանը Սեդիուրին
31 որդին Եղիսուրն էր ։ Անոր ընծան
•• էր․ սրբարանին սիկղին համե֊
մատ՝ հարիւր երսուն սիկղէ մէկ
արծաթ սկուտեղ, եօթանասուն
սիկղէ մէկ արծաթ կոնք, երկուքն
ալ լեցուն էին հացի ընծայի համար
եղով շաղուած բարակ ալիւրով,
32 Տասը սիկղ ոսկիէ մէկ խնկաման
33 խունկով լեցուն, Մէկ զուարակ՝
մէկ խոյ՝ և մէկ տարեկան մէկ գառն
34 ողջակէզի համար, Այծերէն մէկ
նոխազ մեղքի պատարագի համար,
35 Եւ խաղաղութեան զոհի համար
երկու արջառ՝ հինգ խոյ՝ հինգ նո֊
խազ՝ և հինգ հատ մէկ տարեկան
գառինք․ Սեդիուրին որդւոյն Ե֊
ղիսուրին ընծան աս էր ։
36 Հինգերորդ օրը մատուցանողը՝
Շմաւոնի որդւոց իշխանը Սու֊
րիսադային որդին Սաղամիէլն էր ։
37 Անոր ընծան •• էր․ սրբարանին
սիկղին համեմատ՝ հարիւր երսուն
սիկղէ մէկ արծաթ սկուտեղ, եօ֊
թանասուն սիկղէ մէկ արծաթ
կոնք, երկուքն ալ լեցուն էին հա֊
ցի ընծայի համար եղով շաղուած
38 բարակ ալիւրով, Տասը սիկղ ոսկիէ
մէկ խնկաման խունկով լեցուն,
39 Մէկ զուարակ՝ մէկ խոյ՝ և մէկ
տարեկան մէկ գառն ողջակէզի հա֊
40 մար, Այծերէն մէկ նոխազ մեղ֊
41 քի պատարագի համար, Եւ խաղա֊
ղութեան զոհի համար երկու ար֊
ջառ՝ հինգ խոյ՝ հինգ նոխազ՝ և
հինգ հատ մէկ տարեկան գառինք․
Սուրիսադային որդւոյն Սաղամիէ֊
լին ընծան աս էր ։
42 Վեցերորդ օրը մատուցանողը՝ Գա֊

Ն․Ք․ԴՔ․
1490

Ն․ Ք․ Ք․
1490

դի որդւոց իշխանը Դագուէլին որ֊
43 դին Եղիասափին էր ։ Անոր ընծան
այս էր․ սրբարանին սիկղին համե֊
մատ՝ հարիւր երսուն սիկղէ մէկ
արծաթ սկուտեղ , եօթանասուն
սիկղէ մէկ արծաթ կոնք , երկուքն
ալ լեցուն էին հացի ընծայի համար
եղով շաղուած բարակ ալիւրով ,
44 Տասը սիկղ ոսկիէ մէկ խնկաման
45 խունկով լեցուն , Մէկ զուարակ՝
մէկ խոյ՝ և մէկ տարեկան մէկ գառն
46 ողջակէզի համար , Այծերէն մէկ
նոխազ մեղքի պատարագի համար ,
47 Եւ խաղաղութեան զոհի համար
երկու արջառ՝ հինգ խոյ՝ հինգ նո֊
խազ՝ և հինգ հատ մէկ տարեկան
գառինք․ Դագուէլին որդւոյն Ե֊
ղիասափին ընծան աս էր ։
48 Եօթներորդ օրը մատուցանողը՝
Եփրեմի որդւոց իշխանը Ամիուդին
49 որդին Եղիսաման էր ։ Անոր ըն֊
ծան այս էր․ սրբարանին սիկղին
համեմատ՝ հարիւր երսուն սիկղէ
մէկ արծաթ սկուտեղ , եօթանա֊
սուն սիկղէ մէկ արծաթ կոնք , եր֊
կուքն ալ լեցուն էին հացի ընծայի
համար եղով շաղուած բարակ ա֊
50 լիւրով , Տասը սիկղ ոսկիէ մէկ
51 խնկաման խունկով լեցուն , Մէկ
զուարակ՝ մէկ խոյ՝ և մէկ տարե֊
կան մէկ գառն ողջակէզի համար ,
52 Այծերէն մէկ նոխազ մեղքի պա֊
53 տարագի համար , Եւ խաղաղու֊
թեան զոհի համար երկու արջառ՝
հինգ խոյ՝ հինգ նոխազ՝ և հինգ
հատ մէկ տարեկան գառինք․ Ա֊
միուդին որդւոյն Եղիսամային ըն֊
ծան աս էր ։
54 Ութերորդ օրը մատուցանողը՝
Մանասէի որդւոց իշխանը Փադա֊
սուրին որդին Գամաղիէլն էր ։
55 Անոր ընծան այս էր․ սրբարանին
սիկղին համեմատ՝ հարիւր երսուն
սիկղէ մէկ արծաթ սկուտեղ , եօ֊
թանասուն սիկղէ մէկ արծաթ
կոնք , երկուքն ալ լեցուն էին հա֊
ցի ընծայի համար եղով շաղուած
56 բարակ ալիւրով , Տասը սիկղ ոսկիէ
մէկ խնկաման խունկով լեցուն ,
57 Մէկ զուարակ՝ մէկ խոյ՝ և մէկ
տարեկան մէկ գառն ողջակէզի հա֊
58 մար , Այծերէն մէկ նոխազ մեղքի
59 պատարագի համար , Եւ խաղա֊
ղութեան զոհի համար երկու ար֊
ջառ՝ հինգ խոյ՝ հինգ նոխազ և
հինգ հատ մէկ տարեկան գառինք․
Փադասուրին որդւոյն Գամաղիէլին
ընծան աս էր ։
60 Իններորդ օրը մատուցանողը՝ Բե֊
նիամինի որդւոց իշխանը Գեդէօ֊
61 նիին որդին Աբիդանն էր ։ Անոր
ընծան այս էր․ սրբարանին սիկղին
համեմատ՝ հարիւր երսուն սիկղէ
մէկ արծաթ սկուտեղ , եօթանա֊
սուն սիկղէ մէկ արծաթ կոնք , եր֊
կուքն ալ լեցուն էին հացի ընծայի
համար եղով շաղուած բարակ ա֊
62 լիւրով , Տասը սիկղ ոսկիէ մէկ
63 խնկաման խունկով լեցուն , Մէկ
զուարակ՝ մէկ խոյ՝ և մէկ տարեկան
64 մէկ գառն ողջակէզի համար , Այ֊
ծերէն մէկ նոխազ մեղքի պատա֊
65 րագի համար , Եւ խաղաղութեան
զոհի համար երկու արջառ՝ հինգ
խոյ՝ հինգ նոխազ՝ և հինգ հատ մէկ
տարեկան գառինք․ Գեդէօնիին
որդւոյն Աբիդանին ընծան աս էր ։
66 Տասներորդ օրը մատուցանողը՝
Դանի որդւոց իշխանը Ամիսադային
67 որդին Աքիեզերն էր ։ Անոր ըն֊
ծան այս էր․ սրբարանին սիկղին
համեմատ՝ հարիւր երսուն սիկղէ
մէկ արծաթ սկուտեղ , եօթանա֊
սուն սիկղէ մէկ արծաթ կոնք , եր֊
կուքն ալ լեցուն էին հացի ընծայի
համար եղով շաղուած բարակ ա֊
68 լիւրով , Տասը սիկղ ոսկիէ մէկ
69 խնկաման խունկով լեցուն , Մէկ
զուարակ՝ մէկ խոյ՝ և մէկ տարեկան
70 մէկ գառն ողջակէզի համար, Այծե֊
րէն մէկ նոխազ մեղքի պատարա֊
71 գի համար , Եւ խաղաղութեան
զոհի համար երկու արջառ՝ հինգ
խոյ՝ հինգ նոխազ՝ և հինգ հատ մէկ
տարեկան գառինք․ Ամիսադային
որդւոյն Աքիեզերին ընծան աս էր ։
72 Մետասաներորդ օրը մատուցանո֊
ղը՝ Ասերի որդւոց իշխանը Եքրանին
73 որդին Փագիէլն էր ։ Անոր ընծան
այս էր․ սրբարանին սիկղին համե֊
մատ՝ հարիւր երսուն սիկղէ մէկ
արծաթ սկուտեղ , եօթանասուն
սիկղէ մէկ արծաթ կոնք , երկուքն
ալ լեցուն էին հացի ընծայի համար
եղով շաղուած բարակ ալիւրով ,
74 Տասը սիկղ ոսկիէ մէկ խնկաման
75 խունկով լեցուն , Մէկ զուարակ՝
մէկ խոյ՝ և մէկ տարեկան մէկ գառն
76 ողջակէզի համար , Այծերէն մէկ
նոխազ մեղքի պատարագի համար ,
77 Եւ խաղաղութեան զոհի համար
երկու արջառ՝ հինգ խոյ՝ հինգ
նոխազ՝ և հինգ հատ մէկ տարեկան
գառինք․ Եքրանին որդւոյն Փա֊
գիէլին ընծան աս էր ։
78 Երկոտասաներորդ օրը մատուցա֊
նողը՝ Նեփթաղիմի որդւոց իշխանը
79 Ենանին որդին Աքիրէն էր ։ Անոր
ընծան այս էր․ սրբարանին սիկղին
համեմատ՝ հարիւր երսուն սիկղէ
մէկ արծաթ սկուտեղ , եօթանա֊
սուն սիկղէ մէկ արծաթ կոնք ,
երկուքն ալ լեցուն էին հացի
ընծայի համար եղով շաղուած բա֊
80 րակ ալիւրով , Տասը սիկղ ոսկիէ մէկ
81 խնկաման խունկով լեցուն , Մէկ

Ն․ Ք․ Ք․
1490

Ն. Ք. ԳՃ.
1490

զուարակ՝ մէկ խոյ՝ և մէկ տարեկան
82 մէկ գառն ողջակէզի համար, Այ-
ծերէն մէկ նոխազ մեղքի պատա-
83 րագի համար, Եւ խաղաղութեան
զոհի համար երկու արջառ՝ հինգ
խոյ՝ հինգ նոխազ՝ և հինգ հատ մէկ
տարեկան գառինք. Ենանին որ-
դւոյն Աքիրէին ընծան աս էր:
84 Սեղանին օծուած օրը՝ անոր
նուիրման հանդէսին համար Իս-
րայէլի իշխաններէն նուիրուած
ընծաները ասոնք էին. տասներկու
արծաթ սկուտեղ՝ տասներկու
արծաթ կոնք, ու տասներկու
85 ոսկի խնկաման, Ամէն մէկ արծաթ
սկուտեղը հարիւր երսուն սիկղ՝ և
ամէն մէկ կոնքը եօթանասուն սիկղ
էր. այս ամաններուն բոլոր արծաթը
երկու հազար չորս հարիւր սիկղ էր,
86 սրբարանին սիկղին համեմատ. Տա-
սներկու ոսկի խնկաման խունկով
լեցուն, ամէն մէկ խնկամանը
սրբարանին սիկղին համեմատ՝
տասնական սիկղ ըլլալով, խնկա-
մաններուն բոլոր ոսկին հարիւր
87 քսան սիկղ էր. Ողջակէզի համար
բոլոր արջառները տասներկու
զուարակ, խոյերը տասներկու,
մէկ տարեկան գառինքը տասներ-
կու էին, իրենց հացի ընծայովը.
և մեղքի պատարագի համար այծե-
88 րէն նոխազները տասներկու. Եւ
խաղաղութեան զոհի համար բոլոր
արջառները քսանուչորս զուարակ
էին, խոյերը վաթսուն, նոխազները
վաթսուն, և մէկ տարեկան գա-
ռինքը վաթսուն էին: Աս էր սե-
ղանին նուիրման հանդէսը՝ անոր
Հ. 2ՁՐ 1. ᵃօծուելէն ետքը:
89 Եւ երբոր Մովսէս ժողովքի խո-
րանը կը մտնէր ᵇԱնոր հետ խօսե-
լու, ան ատենը ղիրեն խօսողին
ձայնը՝ վկայութեան տապանակին
վրայ եղած քաւութիւնին վրայէն՝
երկու քերովբէներուն մէջտեղէն
կը լսէր, ու ինքը Անոր հետ կը
խօսէր:

ᵇ Գլ. ԺԲ. 8: Ել. ԼԴ. 9, 11: Եբ. ԻԵ. 22:

ԳԼ. Ը

1 Ճրագները վառելուն կերպը: 5 Ղևտացւոց նուիրումը: 23 Անոնց պաշտօն կատարելու համար որոշուած հասակը:

1 Եւ Տէրը խօսեցաւ Մովսէսին ըսե-
2 լով. Խօսէ Ահարոնին՝ ու ըսէ
անոր. Երբոր ᵃճրագները վառես,
եօթը ճրագները աշտանակին առ-
3 ջևի կողմէն լոյս պիտի տան: Եւ
Ահարոն անանկ ըրաւ. անոր ճրագ-
ները աշտանակին առջևի կողմը վա-
ռեց, ինչպէս որ Տէրը Մովսէսին
4 պատուիրեց: ᵇԵւ աշտանակին
շէնքը աստանկ էր, *կռածոյ ոսկիէ
էր. անոր բունէն մինչև անոր ծա-
ղիկները ᶜկռածոյ էր. ᵈՏէրոջը
Մովսէսին ցուցուցած գաղափարին
պէս՝ անանկ շինեց աշտանակը:
5 Եւ Տէրը խօսեցաւ Մովսէսին՝ ը-
6 սելով. Իսրայէլի որդւոցը մէջէն
Ղևտացիները առ, ու մաքրէ ա-
7 նոնք: Եւ անոնք մաքրելու համար
աստանկ պիտի ընես անոնց. ᵉմաք-
րութեան ջուր սրսկես անոնց վրայ,
ու ᶠածելի իրենց բոլոր մարմինները
ածիլեն, և իրենց հան-
դերձները լուան՝ ու մաքրուին:
8 Ետքը զուարակ մը թող առնեն ու
ᵍանոր հացի ընծային համար եղով
շաղուած բարակ ալիւր. ուրիշ
ուրիշ զուարակ մը պիտի առնես
9 մեղքի պատարագի համար: ʰՈւ
Ղևտացիները ժողովքի խորանին
առջևը պիտի մօտեցնես. ⁱԵւ Իս-
րայէլի որդւոցը բոլոր ժողովքը
10 ժողվես: Ու Ղևտացիները Տէրո-
ջը առջևը պիտի մօտեցնես, ու
Իսրայէլի որդիքը ʲիրենց ձեռքերը
11 Ղևտացւոց վրայ դնեն: Եւ Ահա-
րոն Իսրայէլի որդւոցը կողմէն՝ Ղև-
տացիները Տէրոջը առջևը ᵏընծայ
պիտի մատուցանէ. և անոնք Տէ-
րոջը պաշտօնը կատարելու համար
12 ըլլան: ˡՈւ Ղևտացիք իրենց ձեռ-
քերը զուարակներուն գլխուն վրայ
պիտի դնեն. ու Ղևտացւոց քա-
ւութիւն ընելու համար՝ մէկ զուա-
րակը մեղքի պատարագ՝ ու մէկալը
ողջակէզ պիտի մատուցանես Տէ-
13 րոջը: Եւ Ղևտացիները Ահարոնին
ու անոր որդւոցը առջևը պիտի
կայնեցընես, ու զանոնք ընծայ մա-
14 տուցանես Տէրոջը: Այսպէս պի-
տի զատես Ղևտացիները Իսրայէլի
որդւոցը մէջէն, ու Ղևտացիները
15 ᵐիմս պիտի ըլլան: Եւ անկէ ետև
Ղևտացիները ժողովքի խորանին
գործը ընելու պիտի մտնեն: Այս-
պէս պիտի մաքրես անոնք, և ⁿըն-
16 ծայ մատուցանես անոնք. Քան-
զի անոնք բոլորովին ինծի տրուած
են Իսրայէլի որդւոցը մէջէն. Իս-
րայէլի որդւոցը մէջ ᵒմօրը արգան-
դը բացող բոլոր առջինեկներուն
17 տեղը ինծի առի անոնք: ᵖԻնչու
որ Իսրայէլի որդւոցը բոլոր առջի-
նեկները, թէ մարդու և թէ անա-
սունի, իմս են. Եգիպտոսի երկ-
րին մէջ բոլոր առջինեկները զար-
կած օրես՝ զանոնք սրբեցի ինծի
18 համար: Եւ Իսրայէլի որդւոցը բո-
լոր առջինեկներուն տեղը Ղևտա-
19 ցիները առի: Եւ ᑫԻսրայէլի որ-
դւոցը մէջէն Ղևտացիները բոլորո-
վին Ահարոնին ու անոր որդւոցը
տուի, որ ժողովքի խորանին մէջը
Իսրայէլի որդւոցը պաշտօնը ընեն,
և Իսրայէլի որդւոց համար քաւու-
թիւն ընեն, ʳոր Իսրայէլի որդւո-

Ն. Ք. ԳՃ.
1490

ᵃ Ել. ԻԵ. 37: Ի. 25:
ᵇ Ել. ԻԵ. 31:
* Կամ՝ ճախարակեայ
ᶜ Ել. ԻԵ. 18:
ᵈ Ել. ԻԵ. 40:
ᵉ Գլ. ԺԹ. 9, 17, 18:
ᶠ Եբր. մե-
ղաց, կամ
մեղքի պա-
տարագի
ᵍ Ղև. ԺԴ. 8, 9:
Ղև. Բ. 1:
ʰ Տես Ել. ԽԹ. 4: Ի. 12:
ⁱ Ղև. Ը. 3:
ʲ Ղև. Ա. 4:
ᵏ Եբր. երեր-
ցընելու ըն-
ծայ պիտի
երերցընէ.
ˡ Ել. ԻԹ. 10:
ᵐ Գլ. Գ. 45: ԺԳ. 9:
ⁿ Հ. 2ՁՐ 11, 13:
ᵒ Գլ. Գ. 12, 45:
ᵖ Ել. ԺԴ. 2, 12, 13, 15: Գլ. Գ. 13: Ղու. Բ. 23:
ᑫ Գլ. Գ. 9:
ʳ Գլ. Ա. 53: ԺԶ. 46: ԺԸ. 5: Բ Մն. ԻԶ. 16:

Ն.Ք. ՂՔ.
1490

ցը վրայ հարուած չգայ՝ երբոր Իս-
րայէլի որդիքը սրբարանին մօտե-
նան ։
20 Եւ Մովսէս ու Ահարոն և Իսրա-
յէլի որդւոցը բոլոր ժողովքը՝ Ղե-
տացւոց վրայով Տէրոջը Մովսէսին
բոլոր պատուիրածին պէս ըրին Ղե-
տացիներուն . Իսրայէլի որդիքը
21 անանկ ըրին անոնց . ԺԵւ Ղետա-
ցիները մաքրուեցան , և իրենց հան-
դերձները լուացին , ԺԵ Ահարոն
ընծայ մատուց զանոնք Տէրոջը առ-
ջևը . ու Ահարոն անոնց համար
քաւութիւն ըրաւ՝ որ զանոնք
22 մաքրէ ։ ԺԲԵւ անկէ ետև Ղետա-
ցիները ժողովքի խորանին մէջ
մտան Ահարոնին ու անոր որդւոցը
առջևը իրենց պաշտօնը ընելու հա-
մար . Ղետացւոց վրայով ԺԳՏէրոջը
Մովսէսին պատուիրածին պէս , ա-
նանկ ըրին անոնց ։
23 Եւ Տէրը խօսեցաւ Մովսէսին՝ ը-
24 սելով . Ղետացւոց նոյնը աս ըլ-
լայ . ԺԴքսանուհինգ տարեկանէն
վեր եղողները՝ ժողովքի խորանին
պաշտօնը ընելու գունդին մէջ պի-
25 տի մտնեն . Եւ յիսուն տարեկան
ըլլալէն ետքը՝ պաշտօնին գունդէն
պիտի դադարին , ու ալ ծառայե-
26 լու չեն . Սակայն ժողովքի խո-
րանին մէջ ԺԵպահպանութիւնը պա-
հելու պիտի օգնեն իրենց եղբայր-
ներուն , և ծառայութիւն պիտի
չընեն . ասանկ պիտի ընես Ղետա-
ցիներուն՝ իրենց պահպանութիւն-
ներուն համար ։

Ղ Հմր 7 . ԺԱ Հմր 11 , 12 . ԺԲ Հմր 15 . ԺԳ Հմր 5 , 22 . ԺԴ Տեսգլ. դ. 3 . ամն. իգ. 3 , 24 , 27 . ԺԵ Գլ. ա. 53 .

## ԳԼ. Թ

1 Երկրորդ տարին նորէն զատիկը ընել կը պա-
տուիրուի ։ 6 Անմաքուր եղողները ու դուրս
տեղ գտնուողները երկրորդ ամսուն մէջ պիտի
ընէին զատիկը ։ 15 Իսրայէլացիք ամպին ա-
ռաջն առաջնորդութեամբը կը չուէին՝ ու իջևան կ՚ը-
նէին ։

1 Եւ Տէրը խօսեցաւ Մովսէսին Սի-
նայի անապատին մէջ՝ անոնց
Եգիպտոսի երկրէն ելլելուն երկ-
րորդ տարին առջի ամսուն մէջ՝
2 ըսելով . Իսրայէլի որդիքը Աիր
որոշուած ժամանակին թող ընեն
3 զատիկը ։ Աս ամսուն չորեքտա-
սաներորդ օրը Բիրիկուան դէմ
պիտի ընէք ան՝ իր որոշուած
ժամանակին . անոր բոլոր կա-
նոններուն ու անոր բոլոր սովո-
րութիւններուն համեմատ պիտի ը-
4 նէք ան ։ Եւ Մովսէս խօսեցաւ
Իսրայէլի որդւոցը՝ որ զատիկը ը-
5 նեն ։ Եւ անոնք Գառաջին ամ-
սուն չորեքտասաներորդ օրը իրի-
կուան դէմ զատիկը ըրին Սինայի
անապատին մէջ . Տէրոջը Մովսէ-
սին բոլոր պատուիրածին պէս՝ Իս-
րայէլի որդիքը անանկ ըրին ։

Ա Ել. ժբ. 1 , 22 , Ղե. իգ. 5 , Գլ. իը. 16 , ր Օր. ժզ. 1 , 2 , Բ Ել. ժբ. 6 . Գ Յես. ե. 10 .

6 Եւ կային ոմանք՝ որ Դմարդու
մեռելէ պղծուած ըլլալով , ան օրը
չկրցան զատիկը ընել . Եև ան օրը
Մովսէսին ու Ահարոնին առջևը ե-
7 կան . Եւ ան մարդիկը ըսին անոր .
Մենք մարդու մեռած մարմինէ
պղծուած ենք . ինչու համար Իս-
րայէլի որդւոցը մէջ Տէրոջը պա-
տարագը իր որոշուած ժամանակին
8 մատուցանելէն արգիլուինք ։ Եւ
Մովսէս ըսաւ անոնց . կեցէք՝
Զ*նայիմ Տէրը ինչ կը պատուիրէ
ձեր վրայով ։
9 Եւ Տէրը խօսեցաւ Մովսէսին՝ ը-
10 սելով . Խօսէ Իսրայէլի որդւոցը՝
ու ըսէ . թէ որ ձեզմէ կամ ձեր
սերունդէն մէկը մեռած մարմինէ մը
պղծուի , կամ հեռաւոր ճամբոր-
դութեան մէջ ըլլայ , անիկայ ալ
11 զատիկը պիտի ընէ Տէրոջը . ԷԵրկ-
րորդ ամսուն չորեքտասաներորդ
օրը իրիկուան դէմ պիտի ընեն ան .
Ըբաղարջով ու լեղի խոտերով պի-
12 տի ուտեն ան . ԹԱնկէ մինչև առ-
տու բան մը պիտի չթողուն , Ժև
անկէ ոսկոր մը չկոտրեն . Իզատկին
բոլոր կանոններուն համեմատ պի-
13 տի ընեն ան ։ Բայց թէ որ մա-
քուր եղող՝ ու ճամբորդութեան
մէջ չեղող մարդը զատիկը ընելը
զանց ընէ , ան անձը Լիր ժողո-
վուրդին մէջէն պիտի կորսուի .
ինչու որ ԽՏէրոջը պատարագը իր
որոշուած ժամանակին չմատուց .
ան մարդը Ծիր մեղքը պիտի կրէ ։
14 Եւ թէ որ օտարական մը ձեր մէջը
պանդխտանայ , ու զատիկը ընելու
ըլլայ Տէրոջը , զատկին կանոնին և
անոր սովորութեանը համեմատ պի-
տի ընէ ան . թէ օտարականին՝ և
թէ երկրին բնակին համար Կմէկ
կանոն պիտի ունենաք ։
15 Եւ Հան օրը՝ որ խորանը կանգ-
նուեցաւ , վկայութեան վրանին
վրայովը ամպը պատեց խորանը .
ու Ձիրիկուընէ մինչև առտու խո-
րանին վրայ կրակի երևոյթով կը
16 կենար ։ Միշտ ասանկ էր . ցորէնը
ամպը կը ծածկէր ան , և գիշերը
17 կրակին երևոյթը ։ Ու երբոր ամ-
պը Ղխորանէն կը վերնար , անկէ
ետև Իսրայէլի որդիքը կը չուէին .
և ուր որ ամպը կը կենար , հոն Իս-
18 րայէլի որդիքը իջևան կ՚ընէին ։ Տէ-
րոջը հրամանովը Իսրայէլի որդի-
քը կը չուէին , և Տէրոջը հրամա-
նովը իջևան կ՚ընէին . Ճամպը խո-
րանին վրայ որչափ ատեն որ կը կե-
նար , անոնք իրենց վրաններուն մէջ
19 կը մնային ։ Եւ երբոր ամպը շատ
օրեր խորանին վրայ մնար , Իսրա-
յէլի որդիքը ՄՏէրոջը պահպանու-
թիւնը կը պահէին , ու չէին չուեր .

Ն. Ք. ՂՔ.
1490

Դ Գլ. ե. 2 , ժթ. 11 , 16 , Տես Յով. ժը. 28 . Ե Ել. ժը. 15 , 19 , 26 , Գլ. իէ. 2 . Զ Գլ. իէ. 5 , * Եբր. մտիկ ընեմ . Է Բ Մն. լ. 2 , 15 . Ը Ել. ժբ. 8 . Թ Ել. ժբ. 10 . Ժ Ել. ժբ. 46 , Յով. ժթ. 36 . Ի Ել. ժբ. 43 , 22 . Լ Ծն. ժէ. 14 , Ել. ժբ. 15 . Խ Հմր 7 . Ծ Գլ. ե. 31 . Կ Ել. ժբ. 49 . Հ Ել. խ. 34 , Նեեմ. թ. 12 , 19 , Սաղ. հը. 14 . Ձ Ել. ժգ. 21 , խ. 38 . Ղ Ել. խ. 36 , Գլ. Ժ. 11 , 33 , 34 , Սաղ. Ձ. 1 . Ճ Ա Կոր. Ժ. 1 . Մ Գլ. ա. 53 , Գ. Տ .

Ն․ փ․ զՔ․
1490

20 Նոյնպէս ալ երբոր ամպը խորանին
վրայ քիչ օր կենար․ Տէրոջը հրա–
մանին համեմատ իջեան կ'ընէին,
ու Տէրոջը հրամանին համեմատ կը
21 չուէին ։ Նոյնպէս ալ երբոր ամպը
իրիկուընէ մինչև առտու մնար,
առտուանց ամպին վեր ելած ատե–
նը կը չուէին․ թէ ցորեկ ըլլար և
թէ գիշեր՝ ամպին ելած ատենը կը
22 չուէին ։ Կամ երկու օր՝ կամ մէկ
ամիս՝ և կամ մէկ տարի՝ որ ամպը
խորանին վրայ կենալով մնար, Իս–
րայէլի որդիքը յ իջեան կ'ընէին, ու–
չէին չուեր․ բայց երբոր վերնար,
23 կը չուէին ։ Տէրոջը հրամանին
համեմատ իջեան կ'ընէին, և Տէրո–
ջը հրամանին համեմատ կը չուէին․
Մովսէսին ձեռքովը տրուած Տէրո–
ջը հրամանին համեմատ՝ ն Տէրոջը
պահպանութիւնը կը պահէին ։

յ Ել․ խ․ 36, 37 ։
ն Հմր 19 ։

ԳԼ․ Ժ

1 Արծաթէ փողերուն գործածութիւնը ։ 11 Իսրայէլացիները Սինայէն դէպ 'ի Փառան կը չուեն ։ 14 Անոնց չուելուն կարգը ։ 29 Մովսէս իր Յոբաբ աները կը յորդորէ որ իրենց հետ երթայ ։ 33 Տապանակին չուելու ու կենալու ատենը՝ Մովսէսին տուած օրհնութիւնը ։

1 Եւ Տէրը խօսեցաւ Մովսէսին՝ ը–
2 սելով․ Քեզի երկու հատ ար–
ծաթէ փող շինէ․ կռածոյ պիտի
շինես զանոնք, որ ա ժողովքը կանչե–
լու համար՝ ու բանակներուն չուե–
3 լուն համար գործածես ։ Եւ երբոր
բ զանոնք հնչեցնեն, բոլոր ժողովքը
քովդ պիտի ժողվուին ժողովքի խո–
4 րանին դուռը ։ Եւ թէ որ փողին
մէկը հնչեցնեն, իշխանները՝ գ Իս–
րայէլին հազարապետները քովդ
5 պիտի ժողվուին ։ Եւ երբոր ազ–
դարարութեան համար հնչեցնէք,
դ արևելքը իջեան ընող բանակները
6 պիտի չուեն ։ Ու երբոր երկրորդ
անգամ ազդարարութեան փողը
հնչեցնէք, ե հարաւային կողմը իջ–
եան ընող բանակները պիտի չուեն․
անոնց չուելուն համար ազդարա–
րութեան փողը պիտի հնչեցնեն ։
7 Եւ երբ ժողովուրդը ժողվելու ըլ–
լաք՝ զ փող պիտի հնչեցնէք, բայց
է ազդարարութիւն պիտի չընէք ։
8 ը Եւ փողերը հնչեցնողները՝ Ահա–
րոնին որդիքը քահանաները պիտի
ըլլան․ և *ասիկայ ձեր ազգերուն
մէջ յաւիտենական կանոն ըլլայ
9 ձեզի ։ Եւ թ Եթէ որ պատերազմե–
լու երթաք՝ ձեր երկրին մէջ ժ ձեզի
նեղութիւն տուող թշնամիին դէմ,
փողերով ազդարարութիւն պիտի
ընէք․ ու ի պիտի յիշուիք Տէրոջը
ձեր Աստուծոյն առջևը, և ձեր
10 թշնամիներէն ազատուիք ։ Եւ
լ ձեր ուրախութեան օրերուն՝ ու

ա Եւ․ ա․ 13 ։
բ Երեմ․ դ․ 5 ։ Յովէլ․ բ․ 15 ։
գ Ել․ ժը․ 21 ։ Գլ․ ա․ 16 ։ է․ 2 ։
դ Գլ․ բ․ 3 ։
ե Գլ․ բ․ 10 ։
զ Հմր 3 ։
է Յովէլ․ բ․ 1 ։
ը Գլ․ լա․ 6 ։ Ցես․ զ․ 4 ։ ա Մն․ ժե․ 24 ։ բ Մն․ ժգ․ 12 ։
* Եբր․ օրէնք
թ Գլ․ լա․ 6 ։ Ցես․ զ․ 5 ։ բ Մն․ ժգ․ 14 ։
ժ Դատ․ բ․ 18 ։ դ․ 3 ։ զ․ 9 ։ ժ․ 8, 12 ։ ա Թագ․ ժ․ 18 ։ Սաղ․ ճզ․ 42 ։
ի Թն․ ը․ 1 ։ Սաղ․ ճզ․ 4 ։
լ Գլ․ իթ․ 1 ։ Ղև․ իգ․ 24 ։ ա Մն․ ժե․ 24 ։ բ Մն․ ե․ 12 ։ է․ 6 ։ իթ․ 26 ։ Եզր․ գ․ 10 ։ Նեեմ․ ժբ․ 35 ։ Սաղ․ ձա․ 3 ։

ձեր տօներուն՝ և ձեր ամսագլուխ–
ներուն մէջ՝ փողերը պիտի հնչե–
ցընէք ձեր ողջակէզներուն վրայ,
ու ձեր խաղաղութեան զոհերուն
վրայ, որ ձեզի խ յիշատակի համար
ըլլան ձեր Աստուծոյն առջևը․ ես
եմ Տէրը ձեր Աստուածը ։
11 Եւ եղաւ որ երկրորդ տարին
երկրորդ ամսուն քսաներորդ օրը՝
ծ վկայութեան խորանին վրայէն
12 ամպը վեր ելաւ ։ Եւ Իսրայէլի
որդիքը կ իրենց գնացքին համեմատ
չուեցին հ Սինայի անապատէն․ ու
ամպը ձ Փառանի անապատին մէջ
13 կեցաւ ։ Եւ առաջ՝ Մովսէսին
ձեռքովը տրուած ղ Տէրոջը հրա–
14 մանին պէս չուեցին ։ ճ Եւ առաջ՝
Յուդայի որդւոցը բանակին դրօ–
շակը չուեց՝ իրենց գունդերուն
կարգովը․ ու անոր գունդին վրայ
Ամինադաբին որդին մ Նաասոնն
15 էր ։ Եւ Իսաքարի որդւոցը ցեղին
գունդին վրայ Սովգարին որդին
16 Նաթանայէլն էր ։ Եւ Զաբու–
ղոնի որդւոցը ցեղին գունդին վրայ
17 Քեղոնին որդին Եղիաբն էր ։ Եւ
յ խորանը վար իջեցուցին․ ու ն խո–
րանը վերցընող Գերսոնի որդիքը
18 և Մերարիի որդիքը չուեցին ։ Եւ
շ Ռուբէնի բանակին դրօշակը չուեց
իրենց գունդերուն կարգովը․ ու
անոր գունդին վրայ Սեդիուրին որ–
19 դին Եղիսուրն էր ։ Եւ Շմաւոնի
որդւոցը ցեղին գունդին վրայ Սու–
րիսադային որդին Սաղամիէլն էր ։
20 Եւ Գադի որդւոցը ցեղին գունդին
վրայ Դաւուէլին որդին Եղիասափն
21 էր ։ Եւ ո սրբարանը վերցընող
Կահաթացիները չուեցին․ ու խո–
րանը կը կանգնուէր մինչև անոնց
22 գալը ։ Եւ չ Եփրեմի որդւոցը բա–
նակին դրօշակը չուեց իրենց գուն–
դերուն կարգովը․ ու անոր գուն–
դին վրայ Ամիուդին որդին Եղի–
23 սաման էր ։ Եւ Մանասէի որդւո–
ցը ցեղին գունդին վրայ Փադա–
24 սուրին որդին Գամաղիէլն էր ։ Եւ
Բենիամինի որդւոցը ցեղին գուն–
դին վրայ Գեդէօնիին որդին Աբի–
25 դանն էր ։ Եւ պ Դանի որդւոցը
բանակին դրօշակը՝ իրենց գունդե–
րուն կարգովը բոլոր բանակներուն
ետևէն չուեց․ ու անոր գունդին
վրայ Ամիսադային որդին Աքիե–
26 զերն էր ։ Եւ Ասերի որդւոցը ցե–
ղին գունդին վրայ Եքրանին որդին
27 Փագիէլն էր ։ Եւ Նեփթաղիմի
որդւոցը ցեղին գունդին վրայ Ե–
28 նանին որդին Աքիրէն էր ։ ջ Ասոնք
էր Իսրայէլի որդւոցը չուելուն
կարգը իրենց գունդերուն համե–
մատ՝ երբոր կը չուէին ։
29 Եւ Մովսէս իր աներոջը՝ [illegible]

Ն․ փ․ զՔ․
1490

խ Հմր 9 ։
ծ Գլ․ թ․ 17 ։
կ Ել․ խ․ 36 ։ Գլ․ բ․ 9, 16, 24, 31 ։
հ Ել․ ժթ․ 1 ։ Գլ․ ա․ 1 ։ թ․ 5 ։
ձ Ծն․ իա․ 21 ։ Գլ․ ժգ․ 1, 4, 27 ։ բ Օր․ ա․ 1 ։
ղ Հմր 5, 6 ։
ճ Գլ․ բ․ 34 ։
մ Գլ․ բ․ 3, 9 ։
յ Գլ․ ա․ 7 ։
ն Գլ․ ա․ 51 ։
շ Գլ․ դ․ 24, 31 ։ է․ 6, 7, 8 ։
ո Գլ․ բ․ 10, 16 ։
չ Գլ․ դ․ 4, 15 ։ է․ 9 ։
պ Գլ․ բ․ 18, 24 ։
ջ Գլ․ բ․ 25, 31 ։ Ցես․ զ․ 9 ։
Գլ․ բ․ 34 ։

Ն. Ք. ԴՔ. 1490

Մադիանացի Ռագուէլին որդւոյն
Յոբաբին ըսաւ. Մենք կը չուենք
ան տեղը՝ որուն համար Տէրը ըսաւ
որ, Ձեզի պիտի տամ. մեզի հետ
եկուր, ու աղէկութիւն պիտի ընենք քե-
զի. ինչու որ Տէրը Իսրայէլին բա-
30 րիք խոստացաւ։ Եւ անիկայ ը-
սաւ անոր. Չեմ երթար, այլ իմ
երկիրս ու իմ ազգականներուս պի-
31 տի երթամ։ Եւ ինքը ըսաւ.
Շնորհք ըրէ՝ մեզ մի՛ թողուր.
քանզի անապատին մէջ մեր իջեւան
ընելու տեղերը գիտես, ու մեզի
32 առաջնորդ կ՚ըլլաս։ Եւ թէ որ
մեզի հետ երթալու ըլլաս, ինչ
բարութիւն որ Տէրը մեզի ընէ,
մենք ալ քեզի նոյն բարութիւնը
կ՚ընենք։
33 Եւ անոնք Տէրոջը լեռնէն իրեք
օրուան ճամբայ չուեցին. ու Տէ-
րոջը ուխտին տապանակը իրեք
օրուան ճամբայով անոնց առջեւէն
կ՚երթար՝ անոնց հանգստանալու
34 տեղ գտնելու համար։ Եւ երբ
բանակէն կը չուէին, Տէրոջը ամ-
պը ցորեկը անոնց վրան էր։
35 Եւ տապանակին չուելու ատենը՝
Մովսէս կ՚ըսէր. Ելի՛ր՝ ո՛վ Տէր,
ու քու թշնամիներդ թող ցրուին,
ու քեզ ատողները առջեւէդ փախ-
36 չին։ Եւ անոր կենալու ատենը՝
ինքը կ՚ըսէր. Ո՛վ Տէր՝ Իսրայէլին
հազարաւորներուն բիւրաւոր-
ներուն դարձիր։

ԳԼ. ԺԱ

1 Մովսէսին աղաչանքովը Տաբերայի հրկիզութիւնը կը դադարի։ 4 Ժողովուրդը միս ուտելու կը ցանկայ, ու մանանայէն կը զզուի։ 10 Մովսէս իր վրան եղած բեռէն կը գանգատի։ 16 Աստուած անոր ծանրութիւնը եօթանասուն ծերերու կը բաժնէ։ 31 Տէրը անոնց ցանկութեանը վրայ բարկանալով՝ Կիբրօթ հաթթավայի մէջ լորամարգիներ կու տայ անոնց։

1 Եւ ժողովուրդը չարաչար տըր-
տունջ կ՚ընէր Տէրոջը առջեւ.
ու Տէրը լսեց, եւ իր բարկութիւնը
բորբոքեցաւ, ու անոնց մէջ Տէ-
րոջը կրակը վառեցաւ, եւ բանա-
կին ծայրերը եղողները կորսնցուց։
2 Եւ ժողովուրդը աղաղակեց Մով-
սէսին. ու Մովսէս աղօթեց Տէ-
3 րոջը, եւ կրակը դադարեցաւ։ Եւ
ան տեղին անունը Տաբերա դրաւ,
Տէրոջը կրակը անոնց մէջ այրելուն
4 համար։ Եւ անոնց մէջի խառնի-
ճաղանճ բազմութիւնը շատ ցան-
կացան. ու Իսրայէլի որդիքն ալ
դարձան լացին, եւ ըսին. Ո՞վ
5 մեզի ուտելու միս պիտի տայ. Ե-
գիպտոսի մէջ մեր ձրի կերած ձու-
կերը՝ վարունգները ու սեխերը եւ
պրասները ու սոխերը եւ խստորները
6 միտքերնիս կու գան. Եւ հիմա
մեր անձը չորցաւ. մանանայէն
զատ ուրիշ բան մը չկայ աչքերնուս
7 առջեւ։ Եւ մանանան գինձի
սերմի պէս՝ ու անոր գոյնը ծծմբա-
8 տակի գոյնի պէս էր։ Ժողովուրդը
կը պտըտէր ու կը ժողվէր զանիկայ, եւ
աղացքի մէջ կ՚աղային, կամ ան-
կանի մէջ կը ծեծէին. եւ պտուկնե-
րու մէջ կ՚եփէին, ու անկէ շօթեր
կը շինէին. եւ անոր համը եղոտ
9 զաթաներու համին պէս էր։ Եւ
գիշերը երբոր բանակին վրայ ցօղ
կ՚իջնէր, մանանան ալ անոր վրայ
կ՚իջնէր։
10 Ան ատենը Մովսէս լսեց որ ժո-
ղովուրդը իրենց տոհմերովը ամէն
մէկը իր վրանին դուռը կու լան. եւ
Տէրոջը բարկութիւնը խիստ բոր-
բոքեցաւ, ու Մովսէսին ալ գէշ
11 երեցաւ ասիկա։ Եւ Մովսէս ը-
սաւ Տէրոջը. Ինչո՞ւ քու ծառադ
չարչարեցիր, ու ինչո՞ւ քու առջեւդ
շնորհք չգտայ, որ աս բոլոր ժողո-
վուրդին բեռը իմ վրաս կը դնես։
12 Միթէ ե՞ս եմ յղացեր աս բոլոր
ժողովուրդը, կամ ե՞ս եմ ծներ ա-
սոնք, որ ինծի կ՚ըսես. Դայեակի
մը կաթնկեր տղան գիրկը առնելուն
պէս անոնք գիրկդ առ, ու տար
մինչեւ ան երկիրը՝ որն որ անոնց
հայրերուն տալու երդում ըրիր։
13 Ես ո՞ւսկից միս պիտի ունենամ,
որ աս բոլոր ժողովուրդին տամ.
քանզի իմ բոլորտիքս կու լան ու
կ՚ըսեն. Միս տուր մեզի որ ուտենք։
14 Ես մինակ չեմ կրնար կրել աս բո-
լոր ժողովուրդը. ինչու որ աս ինծի
15 շատ ծանր է։ Եւ թէ որ ինծի ա-
սանկ պիտի ընես, կ՚աղաչեմ մեռ-
ցո՛ւր զիս, թէ որ շնորհք գտայ քու
առջեւդ, որ իմ չարիքս չտեսնեմ։
16 Եւ Տէրը ըսաւ Մովսէսին. Ինծի
Իսրայէլին ծերերէն եօթանասուն
հոգի ժողվէ, որոնք որ դուն գի-
տես թէ ժողովուրդին ծերերը ու
գլխաւորներն են. եւ զանոնք ժո-
ղովքի խորանը բեր, ու հոն քեզի
17 հետ կայնին. Եւ ես հոն պիտի
իջնեմ՝ ու խօսիմ քեզի հետ. եւ
քու վրադ եղած Հոգիէն պիտի
առնեմ, ու անոնց վրայ պիտի
դնեմ, որ ժողովուրդին բեռը վեր-
ցընեն քեզի հետ, ու դուն մինակ
18 չվերցընես։ Եւ ըսէ ժողովուրդին.
Վաղուան համար սրբուեցէ՛ք,
ու միս պիտի ուտէք. ինչու որ
Տէրոջը ականջներուն լացիք՝ ը-
սելով. Ո՞վ մեզի միս պիտի կերցը-
նէ, քանզի Եգիպտոսի մէջ աղէկ
կ՚ապրէինք. ուստի Տէրը ձեզի
միս պիտի տայ, ու դուք պիտի ու-
19 տէք։ Դուք չէ՛ թէ մինակ մէկ օր
պիտի ուտէք, եւ ոչ երկու օր՝ ոչ

Ն. Ք. Գ. Ք.
1490

հինգ օր՝ ո՛չ տասը օր՝ ո՛չ ալ քը֊
20 սան օր. Հապա մէկ ամիս մինչև
քթերնէդ դուրս գալը [illegible],
անանկ որ զզուիք. որովհետև ձեր
մէջտեղը եղող Տէրը արհամարհե֊
ցիք, և անոր առջևը լացիք ըսե֊
լով. Ինչո՞ւ մենք Եգիպտոսէն ե֊
լանք։
21 Եւ Մովսէս ըսաւ. Աս ժողո֊
վուրդը՝ որոնց մէջ կը գտնուիմ,
վեց հարիւր հազար հետևակ հոգի
են, ու դուն ըսիր. Ես անոնց միս
պիտի տամ՝ որ լման մէկ ամիս ու֊
22 տեն. Անոնց բաւական ըլլալու
համար՝ միթէ ոչխարները ու
արջառները մորթուի՞ն. կամ ա֊
նոնց բաւական ըլլալու համար՝ ծո֊
վուն բոլոր ձուկերը մէկտեղ հա֊
23 ւաքուի՞ն։ Եւ Տէրը ըսաւ Մովսէ֊
սին. Միթէ տկա՞ր է Տէրոջը ձեռ֊
քը. հիմա կը տեսնես թէ քեզի
ըսածիս պէս պիտի ըլլա՞յ թէ չէ։
24 Եւ Մովսէս ելաւ ու Տէրոջը խօս֊
քերը ժողովուրդին զրուցեց. և
ժողովուրդին ծերերէն եօթանա֊
սուն հոգի ժողվեց, ու զանոնք
խորանին բոլորտիքը կայնեցուց։
25 Եւ Տէրը ամպին մէջ իջաւ, ու
անոր հետ խօսեցաւ, և անոր վրայ
եղած Հոգիէն առաւ, ու ան եօ֊
թանասուն ծերերուն վրայ դրաւ.
և եղաւ որ Հոգին անոնց վրայ
հանգչելուն՝ մարգարէութիւն ը֊
րին, *բայց անկէ ետև չըրին"։
26 Եւ երկու հոգի բանակին մէջ մնա֊
ցին, մէկուն անունը Ելդադ էր ու
մէկալին անունը Մովդադ. և Հո֊
գին հանգչեցաւ անոնց վրայ. ու
անոնք ան գրուողներէն էին, բայց
խորանը եկած չէին. և բանակին
մէջ մարգարէութիւն կ՚ընէին։
27 Եւ պատանի մը վազեց ու պատմեց
Մովսէսին՝ և ըսաւ. Ելդադը ու
Մովդադը մարգարէութիւն կ՚ընեն
28 բանակին մէջ։ Եւ Նաւէին որդին
Յեսուն՝ Մովսէսին ընտրեալ ծա֊
ռան պատասխան տուաւ ու ը֊
սաւ. Տէ՛ր իմ Մովսէս, արգիլէ
29 զանոնք։ Եւ Մովսէս ըսաւ անոր.
Ինծի՞ համար կը նախանձիս. Ե֊
րանի թէ Տէրոջը բոլոր ժողո֊
վուրդը մարգարէներ ըլլային, և
Տէրը իր Հոգին անոնց վրայ դնէր։
30 Եւ Մովսէս բանակը քաշուեցաւ,
ինքը ու Իսրայէլի ծերերը։
31 Եւ Տէրոջմէն հով մը ելաւ, ու
ծովուն կողմէն լորամարգիներ բե֊
րաւ, ու բանակին վրայ մէկ օրուան
ճամբայ մէկ կողմէն՝ և մէկ օրուան
ճամբայ մէկալ կողմէն՝ բանակին
բոլորտիքը տարածեց, երկրի երե֊
սին վրայէն երկու կանգունի չափ
32 բարձր։ Եւ ժողովուրդը ան բոլոր

ա Սաղ. ՃԸ. 29։ ՃԶ. 15։
բ Գղ. Իա. 5։
գ Ծն. ԺԲ. 2։ Ել. ԺԲ. 37։ Լը. 26։ Գլ. Ա. 46։
դ Տես Դ Թագ. Է. 2։ Մատ. ԺԵ. 33։ Մար. Ը. 4։ Յով. Զ. 7, 9։
ե Ես. Ծ. 2։ ԾԹ. 1։
զ Գլ. ԻԳ. 19։ Եզեկ. ԺԲ. 25։ ԻԴ. 14։
է Համ. 16։
ը Համ. 17։ Գլ. Ժբ. 5։
թ Տես Դ Թագ. Բ. 15։
ժ Տես Ա Թագ. Ժ. 5, 6, 10։ ԺԹ. 20, 21, 23։ Յովէլ. Բ. 29։ Գործ. Բ. 17, 18։ Ա Կոր. ԺԴ. 1, Ե։
* Կամ՝ և չդադարեցան։
ի Տես Ա Թագ. Ի. 26։ Երեմ. ԼԶ. 5։
լ Տես Մար. Թ. 38։ Ղուկ. Թ. 49։ Յով. Գ. 26։
խ Ա Կոր. ԺԴ. 5։
ծ Ել. ԺԶ. 13։ Սաղ. ՃԸ. 26, 27, 28։ ՃԵ. 40։

օրը՝ ու բոլոր գիշերը՝ և հետևեալ
բոլոր օրը ելլելով՝ լորամարգիները
ժողվեցին. քիչ ժողվողը տասը քոռ
ժողվեց. և իրենց համար բանակին
բոլորտիքը [illegible] փռեցին [illegible]
33 [illegible]։ Եւ երբոր դեռ միսը իրենց
ակռաներուն վրան էր, տակաւին
չծամուած՝ Տէրոջը բարկութիւնը
ժողովուրդին վրայ բորբոքեցաւ.
ու Տէրը խիստ մեծ հարուածով
34 զարկաւ ժողովուրդը։ Եւ ան տե֊
ղին անունը †Կիբրոթ հաթթա֊
վա" դրաւ. ինչու որ հոն թաղե֊
35 ցին ցանկացող ժողովուրդը։ Կի֊
բրոթ հաթթավայէն Ասերովթ
չուեց ժողովուրդը, ու Ասերովթի
մէջ ‡մնացին։

## ԳԼ. ԺԲ

1 Աստուած կը յանդիմանէ Մարիամին ու Ահարոնին յանդգնութիւնը 10 Մովսէսին աղաչանքովը Մարիամին բորոտութիւնը կը բժշկուի. 14 Աստուած կը հրամայէ որ Մարիամը բանակէն դուրս՝ գոց պահուի։

1 Եւ Մարիամ ու Ահարոն՝ Մովսէ֊
սին դէմ խօսեցան՝ անոր առած
Եթովպացի կնկանը համար, քան֊
զի անիկայ Եթովպացի կնիկ ա֊
2 ռեր էր, Ու ըսին. Միթէ Տէրը մի֊
այն Մովսէսին ձեռքո՞վը խօսեցաւ.
չէ՞ որ մեր ձեռքովն ալ խօսեցաւ.
3 և Տէրը լսեց։ Եւ Մովսէս շատ
հեզ մարդ մըն էր՝ երկրի վրայ ե֊
4 ղած բոլոր մարդոցմէ աւելի։ Եւ
իսկոյն Տէրը ըսաւ Մովսէսին և Ա֊
հարոնին ու Մարիամին. Դուք ի֊
րեքդ ալ ժողովքի խորանը ելէք.
5 և իրեքնին ալ ելան։ Եւ Տէ֊
րը ամպին սիւնովը իջաւ, ու խո֊
րանին դուռը կայնեցաւ. և Ա֊
հարոնը ու Մարիամը կանչեց,
ու անոնք երկուքնին ալ ելան։
6 Եւ ըսաւ անոնց. Հիմա իմ խօսքս
մտիկ ըրէք. Թէ որ ձեզմէ մէկը
մարգարէ ըլլայ, ես Տէրս ինք֊
զինքս տեսիլքի մէջ կը ճանչցը֊
նեմ անոր. կամ երազի մէջ կը
7 խօսիմ անոր հետ։ Իմ ծառաս
Մովսէսը անանկ չէ, որ իմ բոլոր
8 տանս մէջ հաւատարիմ է. Անոր
հետ բերան առ բերան յայտնա֊
պէս կը խօսիմ, և ո՛չ թէ առա֊
կով. ու անիկայ Տէրոջը կեր֊
պարանքը կը տեսնէ. ուստի իմ
ծառայիս Մովսէսին դէմ խօսելու
9 ինչո՞ւ չվախցաք։ Եւ Տէրոջը բար֊
կութիւնը անոնց վրայ բորբոքե֊
10 ցաւ. ու ինքը գնաց։ Եւ ամպը
վերացաւ խորանէն, ու ահա
Մարիամ ձիւնի պէս բորոտ ե֊
ղաւ. և Ահարոն Մարիամին նայե֊
ցաւ, և ահա անիկայ բորոտ էր։
11 Եւ Ահարոն ըսաւ Մովսէսին. Ո՜հ,
տէր իմ, կ՚աղաչեմ, վրանիս մեղք

Ն. Ք. Գ. Ք.
1490

ի Սաղ. ՀԸ. 30, 31։
† Այսինքն՝ ցանկութեան գերեզմաններ։
կ Բ Օր. Թ. 22։
լ Գլ. ԼԳ. 17։
‡ Եբր. էին։
ա Ել. Բ. 21։
բ Ել. ԺԵ. 20։ Միք. Զ. 4։
գ Ծն. ԻԹ. 33։ Գլ. ԺԱ. 1։ Գ Թագ. ԺԹ. 4։ Եսա. ԼԵ. 4։ Եզեկ. ԼԵ. 12, 13։
դ Սաղ. ՆԶ. 9։
ե Գլ. ԺԱ. 25։ ԺԶ. 19։
զ Ծն. ԺԵ. 1։ Խզ. 2։ Յոբ. ԼԳ. 15։ Եզեկ. Ա. 1։ Դան. Ը. 2։ Ժ. 8, 16, 17։ Ղուկ. Ա. 11, 22։ Գործ. Ժ. 11, 17։ ԻԲ. 17, 18։
է Ծն. ԼԱ. 10, 11։ Գ Թագ. Գ. 5։ Մատ. Ա. 20։
ը Սաղ. ՃԵ. 26։
թ Ա Տիմ. Գ. 15։
ժ Եբր. Գ. 2, 5։
ի Ել. ԼԳ. 11։ Բ Օր. ԼԴ. 10։
լ Ա Կոր. ԺԳ. 12։
խ Ել. ԼԴ. 19։
ծ Բ Պետ. Բ. 10։ Յուդ. 8։
կ Բ Օր. ԻԴ. 9։
հ Դ Թագ. Ե. 27։ ԺԵ. 5։
ձ Մն. ԻԶ. 19, 20։
ղ Բ Թագ. ԺԹ. 19։ ԻԴ. 10։ Առակ. Լ. 32։

մի՛ դներ . քանզի յիմարութիւն
12 ըրինք , ու մեղք գործեցինք . Թող
չնմանի ՚ւ ան մեռած տղուն՝ որ իր
մօրը արգանդէն ելած ատենը անոր
մարմնոյն կէսը սպառուած է ։
13 Եւ Մովսէս աղաղակեց Տէրոջը՝
ըսելով . Կը խնդրեմ քեզմէ , ով
14 Աստուած , բժշկէ՛ անիկայ ։ Եւ
Տէրը ըսաւ Մովսէսին . ՙԹէ որ
անոր հայրը միայն անոր երեսը
թքնելու ըլլար , եօթը օր պիտի
չամըչնա՞ր . Թող անիկայ ՙեօթը օր
բանակէն դուրս գոցուած պահուի ,
15 ու անկէ ետեւ ընդունուի ։ ՙԵւ
Մարիամ բանակէն դուրս եօթը
օր գոցուած մնաց . ու ժողովուրդը
չչուեց մինչեւ Մարիամին ընդու-
նուիլը ։

ԳԼ . ԺԳ

5 Երկիրը լրտեսելու խրկուած մարդոց անուն-
ները ։ 18 Անոնց տրուած պատուէրները , 22
անոնց գործքերը , 27 ու անոնց բերած լուրը ։

1 Եւ ետքը ժողովուրդը ՙԱսերով-
թէն չուեցին , ու Փառանի ա-
2 նապատը իջեւան ըրին ։ Եւ Տէրը
խօսեցաւ Մովսէսին՝ ըսելով .
3 ՙՄարդիկ խրկէ որ լրտեսեն Քա-
նանու երկիրը , որն որ Իսրայէլի
որդւոցը պիտի տամ . անոնց իշ-
խան եղողներէն՝ մէ՛յմէկ մարդ իր
հայրերուն ցեղին կողմէն պիտի
4 խրկէք ։ Եւ Մովսէս Տէրոջը
հրամանին համեմատ խրկեց զա-
նոնք ՙՓառանի անապատէն . բո-
լոր ան մարդիկը Իսրայէլի որդւոցը
5 գլխաւորներն էին , Որոնց անուն-
ները ասոնք են . Ռուբէնի ցեղէն՝
6 Զաքուրին որդին Սամուան , Շը-
մաւոնի ցեղէն՝ Քոռիին որդին Սա-
7 փատը , ՙՅուդայի ցեղէն՝ Յեփո-
8 նէին որդին ՙՔաղէբը , Իսաքարի
ցեղէն՝ Յովսեփին որդին Իգաղը ,
9 Եփրեմի ցեղէն՝ Նաւէին որդին
10 ՙՕսէսը , Բենիամինի ցեղէն՝ Ռա-
11 փուին որդին Փաղտին , Զաբու-
ղոնի ցեղէն՝ Սուդիին որդին Գեդ-
12 դիէլը , Յովսեփի ցեղէն՝ այսինքն
Մանասէի ցեղէն՝ Սուսիին որդին
13 Գադդին , Դանի ցեղէն՝ Գամաղիին
14 որդին Ամիէլը , Ասերի ցեղէն՝ Մի-
15 քայէլին որդին Սաթուրը , Նեփ-
թաղիմի ցեղէն՝ Վափսիին որդին
16 Նաբին , Գադի ցեղէն՝ Մաքիին
որդին Գուէլը ։
17 Ասոնք են ան մարդոցը անուննե-
րը՝ որ Մովսէս խրկեց երկիրը լրտե-
սելու . և Մովսէս Նաւէին որդւոյն
*Օսէսին անունը †Յեսու դրաւ ։
18 Եւ Մովսէս խրկեց զանոնք Քանա-
նու երկիրը լրտեսելու , ու ըսաւ ա-
նոնց . Աս ՙհարաւային կողմէն
դէպ ՚ի վեր երթալով՝ լեռը ե-
19 լէք . Եւ ան երկրին ինչպէս ըլլալը՝
ու հոն բնակող ժողովուրդին զօ-
րաւոր կամ տկար , քիչուոր կամ
20 շատուոր ըլլալը տեսէ՛ք . Եւ ան
երկիրը՝ ուր որ անոնք կը բնակին՝
ինչպէս է , աղէ՞կ է՝ թէ գէշ .
և ինչպէս են ան քաղաքները՝
ուր որ անոնք կը բնակին . վրան-
ներէ՞ բաղկացած են՝ թէ պարըս-
21 պաւոր են . Եւ երկիրը ինչպէս է ,
ՙպարարտ է թէ անբեր . մէջը ծա-
ռեր կա՞ն՝ թէ չէ ։ Եւ ժիր եղէք ,
ու ան երկրին պտուղէն առէք ։
Եւ ան օրերը խաղողին նոր ելած
22 օրերն էր ։ Եւ ելան՝ ու ան եր-
կիրը լրտեսեցին ՙՍին անապատէն
մինչեւ դէպ ՚ի Եմաթ երթալու
23 ՙՌոոբը ։ Եւ հարաւային կողմէն
ելան , ու դէպ ՚ի Քեբրոն եկան .
ու հոն էր բնակչէն ՙԵնակին որդի-
քը ՙԱքիմանը՝ Սէսին և Թողմին .
ու ՙՔեբրոն Եգիպտոսի ՙՏայա-
նիս քաղաքէն եօթը տարի առաջ
24 շինուած էր ։ ՙԵւ մինչեւ Ես-
քողի ձորը եկան , ու անկէ խաղողի
ողկոյզ մը կտրեցին ուռովը մէկ-
տեղ , և երկու հոգի լծակով վեր-
ցուցին անիկայ . և նուռերէն ու
25 թուզերէն ու թզէն ։ Իսրայէլի
որդւոցը անկէ կտրած ողկուզին հա-
մար՝ ան տեղին անունը ‡Եսքողի
26 ձոր կրուեցաւ ։ Եւ քառասուն օրէն
ետքը ան երկիրը լրտեսելէն դար-
27 ձան . Եւ գալով հասան Մովսէսին
ու Ահարոնին և Իսրայէլի որդւոցը
բոլոր ժողովքին՝ ՙՓառանի անա-
պատը ՙԿադէսը . և անոնց ու բո-
լոր ժողովքին լուր բերին . և երկրին
28 պտուղը ցուցուցին անոնց ։ Եւ
պատմեցին անոր՝ ու ըսին . Մեզ
խրկած երկիրդ գացինք . իրաւցընէ
ՙկաթ ու մեղր կը բղխէ ան , ՙև
29 անոր պտուղը աս է ։ Բայց ՙան
երկրին մէջ բնակող ժողովուրդը
զօրաւոր է , և քաղաքները պա-
րըսպաւոր ու խիստ մեծ են . և հոն
30 ՙԵնակին որդիքը տեսանք ։ ՙԱ-
մաղեկացիք ան երկրին հարաւային
կողմը կը բնակին . ու Քետացիք և
Յեբուսացիք ու Ամօրհացիք լեռ-
ները կը բնակին , և Քանանացիք
ծովուն քովը ու Յորդանանու
31 եզերքը կը բնակին ։ Եւ ՙՔաղէբ՝
ժողովուրդը Մովսէսին առջեւ լռե-
ցուց , ու ըսաւ . Աղէ՛ ելլենք , ու
ժառանգենք ան . քանզի մենք ան-
շուշտ կարող ենք անոր տիրելու ։
32 ՙԲայց անոր հետ ելլող մարդիկը
ըսին . Մենք ան ժողովուրդին վրայ
ելլելու կարող չենք . ինչու որ ա-
33 նոնք մեզմէ զօրաւոր են ։ Եւ Հիրենց
լրտեսած երկրին համար գէշ լուր
բերին Իսրայէլի որդւոցը՝ ըսելով .

Ն . Ք . ԴՔ . 1490
ՙԲ Օր . իդ . 9 ։ Բ Մն . իզ . 20 , 21 ։

ՙՍաղ . ծը . 4 ։
ՙՏես Եբր . ժբ . 9 ։
ՙՂև . ժգ . 46 ։ Գլ . ե . 2 , 3 ։
ՙԳլ . ժա . 35 ։ լգ . 18 ։
ՙԳլ . լբ . 8 ։ Բ Օր . ա . 22 ։
ՙՀմր 1 ։ Գլ . լբ . 8 ։ Բ Օր . ա . 19 ։ Թ . 23 ։
ՙԳլ . լդ . 19 ։ ա Մն . դ . 15 ։
ՙՀմր 31 ։ Գլ . ժդ . 6 , 30 ։ Յեսու . ժդ . 6 , 7 , 13 , 14 ։ Դատ . ա . 12 ։
ՙՀմր 17 ։
* Կմ՝ Փրկիչ
† Կմ՝ Տէր Փըր-կիչ
ՙՀմր 23 ։ Ծն . ժգ . 10 ։ Դատ . ա . 9 , 19 ։

Ն . Ք . ԴՔ . 1490
ՙՆեեմ . Թ . 25 , 35 ։ Եզեկ . լդ . 14 ։
ՙԲ Օր . լա . 6 , 7 , 23 ։
ՙԳլ . լդ . 3 ։ Յես . ժե . 1 ։
ՙՅես . ժթ . 28 ։
ՙՀմր 34 ։
ՙՅես . ժա . 21 , 22 ։ ժե . 13 , 14 ։ Դատ . ա . 10 ։
ՙՅես . խա . 11 ։
ՙՍաղ . հը . 12 ։ Ես . ժթ . 11 ։ Լ . 4 ։
ՙԲ Օր . ա . 24 , 25 ։ Գլ . լբ . 9 ։
‡ Կմ՝ ողկոյզի ։
ՙՀմր 4 ։
ՙԳլ . ի . 1 , 16 ։ լբ . 8 ։ լգ . 36 ։ Բ Օր . ա . 19 ։ Յես . ժդ . 6 ։
ՙԵլ . գ . 8 ։ լգ 3 ։
ՙԲ Օր . ա . 25 ։
ՙԲ Օր . ա . 28 ։ Թ . 1 , 2 ։
ՙՀմր 34 ։
ՙԵլ . ժէ . 8 ։ Գլ . ժդ . 43 ։ Դատ . զ . 3 ։ ա Թագ . ժգ . 48 ։ ժե . 3 , 7 ։
ՙՏես Գլ . ժդ . 6 , 24 ։ Յես . ժդ . 7 ։
ՙԳլ . լբ . 9 ։ Բ Օր . ա . 28 ։ Յես . ժդ . 8 ։
ՙԳլ . ժդ . 36 , 37 ։

Ն. Ք. Գ. Ք.
1490

Ամով. Բ. 9։
Բ Օր. Ա. 28։ Բ. 10։ Թ. 2։
Եսա. Խ. 22։
Ա Թագ. ԺԷ. 42։

Գլ. ԺԱ. 4։
Ել. ԺԶ. 2։ ԺԷ. 3։ Գլ. ԺԶ. 41։ Սաղ. ՃԶ. 25։
Տես Հմր 28, 29։
Նեեմ. Թ. 17։
Տես Բ Օր. ԺԷ. 16։ Գոր. Է. 30։
Գլ. ԺԶ. 4, 22։
Հմր 24, 30, 38։ Գլ. ԺԳ. 7, 9։
Գլ. ԺԳ. 28։ Բ Օր. Ա. 25։
Բ Օր. Ժ. 15։ Բ Թագ. ԺԵ. 25, 26։ ԻԲ. 20։ Գ Թագ. Ժ. 9։ Սաղ. ԻԲ. 8։ ՃԽԷ. 10, 11։ Եսա. ԿԲ. 4։
Գլ. ԺԳ. 28։
Բ Օր. Թ. 7, 23, 24։
Բ Օր. Է. 18։ Ի. 3։
Գլ. ԻԳ. 8։
Հռովմ. Ը. 31։ Սաղ. ՃԻԱ. 5։ Եսա. Լ. 2, 3։ Երեմ. ԽԲ. 45։
Ծն. ԽԲ. 21։ Ել. ԼԳ. 16։ Բ Օր. Ի. 1, 3, 4։ ԼԱ. 6, 8։ Յես. Ա. 5։ Դատ. Ա. 22։ Բ Մն. ԺԳ. 12։ ԺԵ. 2։ Ի. 17։ ԼԲ. 8։ Սաղ. ԽԶ. 7, 11։ Եսա. ԽԱ. 10։ Ամով. Ե. 14։ Զաք. Ը. 23։
Ել. ԺԷ. 4։
Ել. ԺԶ. 10։ ԻԴ. 16, 17։ Խ. 34։ Ղեւ. Թ. 23։ Գլ. ԺԶ. 19, 42։ Ի. 6։

Ան երկիրը՝ որուն մէջտեղէն անցանք՝ զանիկայ լրտեսելու համար, իր բնակիչները ուտող երկիր մըն է. և անոր մէջի բոլոր ժողովուրդը՝ որ մենք տեսանք, յաղ-
34 թահասակ մարդիկ են։ Եւ հոն տեսանք հսկաները, Ենակին որդիքը որ հսկաներէն էն. անանկ որ մենք մեր աչքին մարախի պէս երեւցանք, և անանկ ալ անոնց աչքին երեւցանք։

## ԳԼ. ԺԴ

1 Ժողովուրդը աս լուրին վրայ տրտունջ կ՚ընէ։ 6 Յեսուն ու Քաղէբը զանոնք լռեցնելու կը ջանան։ 11 Աստուած անոնց սպառնալիք կ՚ընէ. 13 բայց Մովսէսին աղաչանքը ընդունելով՝ կը ներէ։ 26 Տրտունջ ընող ժողովուրդը խոստացուած երկիրը մտնելէն կը զրկուին։ 36 Գէշ լուր բերող լրտեսները հարուածով կը մեռնին։ 40 Աստուծոյ հրամանէն դուրս՝ երկրին վրայ յարձակող ժողովուրդը կը յաղթուի։

1 Եւ բոլոր ժողովքը ձայնը վերցընե-
լով՝ աղաղակեց. և ժողովուր-
2 դը լացաւ ան գիշերը։ Եւ Իսրա-
յէլի բոլոր որդիքը տրտնջեցին Մով-
սէսին ու Ահարոնին դէմ. ու բոլոր
ժողովքը ըսաւ անոնց. Երանի
թէ՝ Եգիպտոսի երկրին մէջ մեռած
ըլլայինք. կամ երանի թէ՝ աս անապա-
3 տիս մէջ մեռած ըլլայինք։ Եւ ինչո՞ւ
համար Տէրը մեզ աս երկիրը բերաւ,
որ սրով իյնանք, և մեր կնիկները
ու մեր որդիքը յափշտակուին.
աղէկ չը՞լլար մեզի որ Եգիպտոս
4 դառնանք։ Եւ իրարու ըսին.
Մեզի մէկ զօրագլուխ մը ընտրենք,
5 ու Եգիպտոս դառնանք։ Եւ
Մովսէս ու Ահարոն իրենց երեսին
վրայ ինկան Իսրայէլի որդւոցը բո-
լոր ժողվուած ժողովքին առջեւ։
6 Եւ երկիրը լրտեսողներէն՝ Նաւէին
որդին Յեսուն՝ ու Յեփոնէին որդին
Քաղէբը իրենց հանդերձները պատ-
7 ռեցին. Եւ Իսրայէլի որդւոցը բո-
լոր ժողովքին խօսեցան՝ ըսելով.
Ան երկիրը՝ որուն մէջտեղէն ան-
ցանք՝ զանիկայ լրտեսելու համար,
8 խիստ բարի երկիր մըն է։ Թէ որ
Տէրը մեզի հաճի, մեզ ան երկիրը
պիտի տանի, և ան մեզի պիտի
տայ, որ կաթ ու մեղր բղխող
9 երկիր մըն է։ Միայն թէ Տէրոջը
դէմ ապստամբ մի՛ ըլլաք. և ան
երկրին ժողովուրդէն մի՛ վախնաք.
քանզի անոնք մեր կերակուրն են.
անոնց պաշտպանութիւնը գացած
է իրենց վրայէն, ու Տէրը մեզի
10 հետ է. անոնցմէ մի՛ վախնաք։ Եւ
բոլոր ժողովքը ըսին թէ՝ Քարերով
քարկոծենք ասոնք. բայց Տէրոջը
փառքը ժողովքի խորանին մէջ բո-
11 լոր Իսրայէլի որդւոցը երեւցաւ։ Եւ
Տէրը ըսաւ Մովսէսին. Աս ժողո-
վուրդը մինչեւ ե՞րբ զիս պիտի սր-
համարհէ, և իրենց մէջ ըրած
բոլոր հրաշքներովս ալ մինչեւ ե՞րբ
12 պիտի չհաւատան ինծի։ Ես ա-
նոնք ժանտախտով պիտի զարնեմ,
ու կորսնցնեմ անոնք. և քեզ
անոնցմէ մեծ ու զօրաւոր ազգ մը
13 պիտի ընեմ։ Եւ Մովսէս ըսաւ
Տէրոջը. Ան ատենը Եգիպտացիք
պիտի լսեն. քանզի դուն քու կարո-
ղութեամբդ աս ժողովուրդը անոնց
14 մէջէն հանեցիր. Եւ անոնք պիտի
պատմեն աս երկրին բնակիչներուն.
անոնք լսած են որ դուն՝ ո՛վ
Տէր, աս ժողովուրդին մէջտեղն ես,
որ դուն՝ ո՛վ Տէր, դէմ առ դէմ կը
տեսնուիս, և որ քու ամպդ անոնց
վրայ կը կայնի, և որ ցորեկը ամպի
սիւնով՝ ու գիշերը կրակի սիւնով
15 կը քալես անոնց առջեւէն։ Հիմա
թէ որ աս ժողովուրդը մէկ մար-
դու մը պէս մեռցընելու ըլլաս, քու
համբաւդ լսող ազգերը պիտի խօ-
16 սին՝ ըսելով. Տէրը աս ժողովուր-
դը՝ իրենց երդումով խոստացած
երկիրը տանելու կարող չըլլալուն
համար, անապատին մէջ մեռցուց
17 զանոնք։ Եւ հիմա թող իմ Տէ-
րոջս կարողութիւնը մե՛ծ ըլլայ,
18 ինչպէս որ խօսեցար՝ ըսելով. Տէրը
երկայնամիտ է, և առատ ողոր-
մութիւնով, անօրէնութիւնը ու
յանցանքը ներող. բայց յանցաւորը
ամենեւին անպարտ չթողուր, հայ-
րերուն անօրէնութիւնը որդինե-
րուն վրայ՝ մինչեւ երրորդ ու չորրորդ
19 ազգը հատուցանելով. Կ՚աղա-
չեմ՝ Քու մեծ ողորմութեանդ
համեմատ ներէ՛ աս ժողովուրդին
անօրէնութիւնը, ինչպէս որ նե-
րեցիր աս ժողովուրդին Եգիպտո-
20 սէն մինչեւ հոս։ Եւ Տէրը ըսաւ.
21 Քու խօսքիդ պէս ներեցի. Բայց
կենդանի եմ ես, որ բոլոր երկիրը
Տէրոջը փառքովը պիտի լեցուի,
22 Որ բոլոր ան մարդիկը որ Եգիպ-
տոսին մէջ ու անապատին մէջ իմ
փառքս ու իմ ըրած հրաշքներս
տեսան, և մինչեւ հիմա իս տասը
անգամ փորձեցին, ու իմ խօսքս
23 մտիկ չըրին, Պիտի չտեսնեն ան
երկիրը՝ որն որ իրենց հայրերուն
տալու երդում ըրի. իս արհամար-
հողներուն մէկն ալ պիտի չտեսնէ
24 ան. Բայց որովհետեւ իմ ծառաս
Քաղէբը ուրիշ միտք ունեցաւ, ու
ինծի բոլոր սրտով հնազանդեցաւ,
ես ալ անիկայ իր գացած երկիրը
պիտի տանիմ. և անոր սերունդը
25 պիտի ժառանգէ ան։ Եւ Ամա-
ղեկացիք ու Քանանացիք ձորերու
մէջ կը նստին. վաղը դարձէք, և

Ն. Ք. Գ. Ք.
1490

Հմր 23։ Բ Օր. Թ. 7, 8, 22։ Սաղ. ՂԵ. 8։ Եբր. Գ. 8, 16։
Բ Օր. Ա. 32։ Թ. 23։ Սաղ. ՀԸ. 22, 32, 42։ ՃԶ. 24։ Յոհ. ԺԲ. 37։ Եբր. Գ. 18։
Ել. ԼԲ. 10։
Ել. ԼԲ. 12։ Սաղ. ՃԶ. 23։ Բ Օր. Թ. 26, 27, 28։ ԼԲ. 27։ Եզեկ. Ի. 9, 14։
Ել. ԺԵ. 14։ Յես. Բ. 9, 10։ Ե. 1։
Ել. ԺԳ. 21։ Խ. 38։ Գլ. Ժ. 34։ Նեեմ. Թ. 12։ Սաղ. ՀԸ. 14։ ՃԵ. 39։
Բ Օր. Թ. 28։ Յես. Է. 9։
Ել. ԼԴ. 6, 7։ Սաղ. ՃԳ. 8։ ՃԽԵ. 8։ Յովն. Դ. 2։
Ել. Ի. 5։ ԼԴ. 7։
Ել. ԼԴ. 9։ Սաղ. ՃԶ. 45։
Սաղ. ՀԸ. 38։
Սաղ. ՃԶ. 23։ Յակ. Ե. 16։ Ա Յովհ. Ե. 14, 15, 16։
Սաղ. ՀԲ. 19։
Բ Օր. Ա. 35։ Սաղ. ՂԵ. 11։ ՃԶ. 26։ Եբր. Գ. 17, 18։
Ծն. ԼԱ. 7։
Գլ. ԼԲ. 11։ Եզեկ. Ի. 15։
Բ Օր. Ա. 36։ Յես. ԺԴ. 6, 8, 9, 14։
Գլ. ԼԲ. 12։
Բ Օր. Ա. 40։

դէպ 'ի անապատ կարմիր ծովուն
ճամբան չուեցէք ։
26 . Եւ Տէրը խօսեցաւ Մովսէսին ու
27 Ահարոնին՝ ըսելով . աՄինչև ե՞րբ
աս չար ժողովքին ինծի դէմ տըրտընջելուն համբերեմ . բԻս լսեցի Իսրայէլի որդւոցը տրտունջը՝ որ ինծի
28 դէմ կը տրտնջեն . Ըսէ անոնց .
գԵս կենդանի եմ՝ կ'ըսէ Տէրը , որ
դինչպէս դուք իմ ականջներուս
խօսեցաք , անանկ ալ պիտի ընեմ
29 ձեզի . Ձեր դիերը աս անապատիս
մէջ պիտի իյնան . և ձեր բոլոր
հաշիւին համեմատ՝ եձեզմէ ամէն
համրուածները քսան տարեկանէն
վեր եղողները՝ դուք որ ին
30 ծի դէմ տրտնջեցիք . Անշուշտ պիտի չմտնէք այն երկիրը որուն մէջ
ձեզ բնակեցնելու զերդում ըրի" ,
է բաց 'ի Յեփոնէին որդին Քաղէբէն՝ ու Նաւէին որդին Յեսուէն ։
31 ըԲայց ձեր որդիքը՝ որոնց համար
որ դուք ըսիք թէ պիտի յափշտակուին , անոնք պիտի տանիմ , և
թ ձեր չհաւնած երկիրը անոնք պի
32 տի ժճանչնան ։ Բայց ի ձեր դիերը
աս անապատին մէջ պիտի իյնան ։
33 Եւ ձեր որդիքը անապատին մէջ
լքառասուն տարի խ պիտի ծ մոլորին ,
ու ձեր կպոռնկութիւնները կրեն ,
մինչև որ ձեր դիերը անապատին
34 մէջ սպառին ։ հԻնչպէս որ երկիրը քառասուն օրուան մէջ լրտեսեցիք , անանկ ալ այն օրերուն թուոյն
համեմատ՝ ամէն մէկ օրուան տեղը
մէկմէկ տարի սեպելով՝ քառասուն
տարի պիտի կրէք ձեր անօրէնութիւնները , ու իմ ձխոստումիս հեռանալս
35 ճանչնաք . ղԵս Տէրս ըսի . Ինծի
դէմ ժողվուած բոլոր ճաս չար ժողովքին անշուշտ պիտի ընեմ աս
բանը . անոնք աս անապատին մէջ
պիտի սպառին , ու հոն մեռնին ։
36 մԵւ այն մարդիկը՝ որ Մովսէս խըրկեց այն երկիրը լրտեսելու . որոնք
դարձան ու երկրին վրայով գէշ
լուր հանելով՝ բոլոր ժողովքը անոր դէմ տրտնջելու գրգռեցին ,
37 Այն մարդիկը որ այն երկրին վրայով
գէշ լուր հանեցին՝ յհարուածով
38 մեռան Տէրոջը առջևը ։ նԲայց
Նաւէին որդին Յեսուն՝ և Յեփոնէին որդին Քաղէբը՝ որ երկիրը
լրտեսելու գացող մարդիկներէն
39 էին , ողջ մնացին ։ Եւ Մովսէս
աս խօսքերը Իսրայէլի բոլոր որդւոցը զրուցեց , շու ժողովուր
40 դը մեծ սուգ ըրաւ ։ Եւ առտուանց կանուխ լեռանը գլուխը ելան՝ ըսելով . Ահա ոմենք պատրաստ
ենք , և Տէրոջը ըսած տեղը պիտի
ելլենք . ինչու որ մեղք գործեցինք ։
41 Եւ Մովսէս ըսաւ . Ինչո՞ւ հիմա

Ն. Ք. ՂՔ. 1490

ա Հմր 11 ։ Եւ. ժգ. 28 ։ Մատ. ժէ. 16 ։
բ Եւ. ժգ. 12 ։
գ Հմր 23 ։ Գլ. իզ. 65 ։ լբ. 11 ։ Բ Օր. ա. 35 ։ Եբր. գ. 17 ։
դ Տես Հմր 2 ։
ե Գլ. ա. 45 ։ իզ. 64 ։
զ Ծն. ժդ. 22 ։
է Եբր. ձեռքըս վերցուցի ։
ը Հմր 38 ։ Գլ. իզ. 65 ։ լբ. 12 ։ Բ Օր. ա. 36. 38 ։
թ Բ Օր. ա. 39 ։
ժ Սաղ. ճզ. 24 ։
ի Եբր. գիտնան ։
լ Ա Կոր. ժ. 5 ։ Եբր. գ. 17 ։
խ Տես Բ Օր. բ. 14 ։
ծ Գլ. լբ. 13 ։ Սաղ. ճէ. 40 ։
կ Եբր. արածեն ։
հ Եզեկ. իգ. 35 ։
ձ Գլ. ժգ. 26 ։
ղ Սաղ. ղե. 10 ։ Եզեկ. դ. 6 ։
ճ Գլ. իգ. 19 ։
մ Հմր 27. 29 ։ Գլ. իզ. 65 ։ Ա Կոր. ժ. 5 ։
յ Գլ. ժգ. 32. 33 ։
ն Ա Կոր. ժ. 10 ։ Եբր. գ. 17 ։ Յուդ. 5 ։
շ Գլ. իզ. 65 ։ Յես. ժդ. 6. 10 ։
ո Եւ. լգ. 4 ։
չ Բ Օր. ա. 41 ։

պ Տէրոջը հրամանէն դուրս կ'ելլէք .
42 աս բանը պիտի չյաջողի ։ ջՄի
ելլէք , (քանզի Տէրը ձեր մէջը չէ .)
չըլլայ որ ձեր թշնամիներուն առջևը
43 զարնուիք . Ինչու որ Ամաղէկացիք
ու Քանանացիք հոն առջևնիդ են .
և սրով պիտի իյնաք . ռդուք Տէրոջմէն ետ դառնալնուդ համար՝
44 Տէրը ձեզի հետ պիտի չըլլայ ։ սԲայց
անոնք յամառութիւն ընելով՝ լեռանը գլուխը ելան . սակայն Տէրոջը ուխտին տապանակը ու Մովսէսը բանակին մէջէն չզատուեցան ։
45 վԱյն ատենը այն լեռանը վրայ բնակող Ամաղէկացիք ու Քանանացիք
իջան , և զարկին անոնք , ու հալածեցին մինչև տՀորմա ։

## ԳԼ. ԺԵ

1 Հացի ընծային ու թափելու նուէրին կանոնը ։ 13. 29 Օտարականն ալ նոյն կանոնով պիտի ընծայէր . 17 Առջի խմորէն բարձրացընելու ընծայ մատուցանելուն կանոնը . 22 Անգիտութեամբ գործուած մեղքին պատարագը . 30 Հպարտութեան պատիժ ։ 32 Շաբաթը պղծող մարդու մը քարկոծուիլը ։ 37 Ծոպերուն օրէնքը ։

1 Եւ Տէրը խօսեցաւ Մովսէսին ը
2 սելով . աԽօսէ Իսրայէլի որդւոցը , ու ըսէ անոնց . Երբոր մըտնէք ձեր բնակութեան երկիրը՝ որն
3 որ ձեզի պիտի տամ , Եւ Տէրոջը
բանուշ հոտ նուիրելու համար՝
գարջառներէն կամ հօտերէն պատարագ պիտի մատուցանէք Տէրոջը , ողջակէզ՝ կամ դ ուխտ կատարելու զոհ թէ կամաւոր ընծայի համար . և թէ ե ձեր հանդիսա
4 ւոր տօներուն մէջ . Այն ատենը
զիր զոհը Տէրոջը մատուցանողը՝
է հացի ընծայի համար ը հիմենի մը
չորրորդ մասը եղով շաղուած մէկ
տասանորդ բարակ ալիւր պիտի
5 մատուցանէ ։ Եւ ողջակէզին կամ
զոհին հետ մէկ գառի համար թ հիմենի մը չորրորդ մասը գինի թա
6 փելու նուէր պիտի ընես . ժ կամ
խոյի մը համար՝ հիմենի մը երրորդ
մասը եղով շաղուած երկու տասանորդ բարակ ալիւր հացի ընծայ
7 պիտի ընես . Եւ թափելու նուէրի
համար հիմենի մը երրորդ մասը
գինի՝ անուշ հոտի համար Տէրոջը
8 պիտի մատուցանես ։ Եւ երբոր
ողջակէզի համար՝ կամ ուխտ կատարելու զոհի համար՝ կամ ի խաղաղութեան զոհի համար զուարակ
9 մը մատուցանես Տէրոջը , Այն ատենը լ զուարակին հետ կէս հիմէն
եղով շաղուած իրեք տասանորդ
բարակ ալիւր պիտի մատուցանես .
10 Եւ թափելու նուէրի համար կէս
հիմէն գինի պիտի մատուցանես .
[illegible] Տէրոջը անուշահոտ պատա

Ն. Ք. ՂՔ. 1490

պ Հմր 25 ։ Բ Մն. իգ. 20 ։
ջ Բ Օր. ա. 42 ։
ռ Բ Մն. ժե. 2 ։
ս Բ Օր. ա. 43 ։
վ Հմր 43 ։ Բ Օր. ա. 44 ։
տ Գլ. իա. 3 ։ Դատ. ա. 17 ։

ա Հմր 18 ։ Ղև. իգ. 10 ։ Բ Օր. է. 1 ։
բ Ծն. ը. 21 ։ Եւ. իթ. 18 ։
գ Ղև. ա. 2, 3 ։
դ Ղև. է. 16 ։ իբ. 18. 21 ։
ե Ղև. իգ. 8. 12. 36 ։ Գլ. իը. 19. 27 ։ իթ. 2. 8. 13 ։ Բ Օր. ժզ. 10 ։
զ Ղև. բ. 1 ։ զ. 14 ։
է Եւ. իթ. 40 ։ Ղև. իգ. 13 ։
ը Ղև. ժգ. 10 ։ Գլ. իը. 5 ։
թ Գլ. իը. 7. 14 ։
ժ Գլ. իը. 12. 14 ։
ի Ղև. է. 11 ։
լ Գլ. իը. 12. 14 ։

Ն. Ք. ՎՔ.
1490

11 րադ մըն է ։ Ամէն մէկ զուարակի
կամ խոյի համար՝ կամ ոչխարի
կամ այծի համար ասանկ պիտի
12 ըլլայ ։ Ձեր պատրաստելու թուոյն
նայելով՝ անոնց թուոյն համեմատ՝
ամէն մէկուն անանկ պիտի ընէք ։
13 Երկրին ամէն բնակը աս բաները
անանկ պիտի ընէ, Տէրոջը անուշահոտ պատարագ մատուցանելու
14 համար ։ Եւ թէ որ ձեր քովը
պանդխտացած օտարականը՝ կամ
ձեր ցեղերուն մէջ ձեր մէջը բնակողը՝ Տէրոջը անուշահոտ պատարագ ընելու ըլլայ, ձեր ըրածին պէս
15 անիկայ ալ անանկ պիտի ընէ ։ Ո՛վ
ժողովք՝ ե ձեզի համար և ձեր քովը
պանդխտացած օտարականին համար մէկ կանոն պիտի ըլլայ. ձեր
ցեղերուն մէջ յաւիտենական կանոնով՝ Տէրոջը առջեւ ինչպէս էք
դուք, անանկ պիտի ըլլայ օտա-
16 րականն ալ ։ Ձեզի համար և ձեր
քովը պանդխտացած օտարականին
համար՝ մէկ օրէնք ու մէկ սովորութիւն պիտի ըլլայ ։
17 Եւ Տէրը խօսեցաւ Մովսէսին՝ ը-
18 սելով. ժ Խօսէ Իսրայէլի որդւոցը՝
ու ըսէ անոնց. Երբոր այն երկիրը
մտնէք՝ ուր որ ձեզ պիտի տանիմ,
19 Եւ ըլլայ որ երբ կ այն երկրին հացէն
ուտէք, բարձրացընելու ընծայ պի-
20 տի մատուցանէք Տէրոջը ։ հ Ձեր
առջի խմորէն շօթ մը բարձրացընելու ընծայ պիտի մատուցանէք.
յ կալի բարձրացընելու ընծան ինչպէս որ կ'ընէք, աս ալ անանկ
21 պիտի բարձրացընէք ։ Ձեր առջի
խմորէն բարձրացընելու ընծայ պիտի մատուցանէք Տէրոջը՝ ձեր ազգերուն մէջ ։
22 Իսկ ւ թէ որ սխալիք ու չընէք աս
բոլոր պատուիրանքները՝ որ Տէրը
23 ըսաւ Մովսէսին, Նոյն այն ամէնը՝
որ Տէրը ձեզի պատուիրեց Մովսէսին ձեռքովը այն օրէն 'ի վեր՝ որ
Տէրը պատուիրեց ձեր ազգերուն
24 մէջ յետոյ. Եւ ըլլայ որ՝ ե եթէ
ժողովքը սխալմամբ յանցանք մը ընէ, այն ատենը բոլոր ժողովքը՝ Տէրոջը անուշահոտ ողջակէզի համար՝
մէկ զուարակ մը պիտի մատուցանէ է ըստ օրէնի հացի ընծայով
ու թափելու նուէրով, և մեղքի
պատարագի համար յ այծերէն մէկ
25 նոխազ ։ ն Եւ քահանան քաւութիւն պիտի ընէ Իսրայէլի որդւոցը
բոլոր ժողովքին համար, ու թողութիւն պիտի ըլլայ անոնց, ինչու որ սխալմունք էր, և անոնք
իրենց սխալելուն համար իրենց ընծան Տէրոջը պատարագ բերին. ու
նաև իրենց մեղքի պատարագը Տէ-
26 րոջը առջեւ. Ուստի Իսրայէլի որ-

ե Հմր 29 ։ Ել. ժբ. 49 ։ Գւ. թ. 14 ։
ժ Հմր 2 ։ Բ Օր. իզ. 1 ։
կ Յես. ե. 11, 12 ։
հ Բ Օր. իզ. 2, 10 ։ Առակ. գ. 9, 10 ։
յ Ղև. բ. 14 ։ իգ. 10, 16 ։
ւ Ղև. դ. 2 ։
ե Ղև. գ. 13 ։
է Հմր 8, 9, 10 ։
յ Տես Ղև. դ. 23 ։ Գւ. իբ. 15 ։ Եզր. զ. 17 ։ ը. 35 ։
ն Ղև. դ. 20 ։

Ն. Ք. ՎՔ.
1490

դւոցը բոլոր ժողովքին ու անոնց
մէջը պանդխտացած օտարականներուն թողութիւն պիտի ըլլայ.
քանզի բոլոր ժողովուրդը սխալման
մէջ էր ։
27 Եւ ւ թէ որ անձ մը սխալմամբ
մեղք գործէ, այն ատենը մեղքի
պատարագի համար մէկ տարեկան
28 էգ այծ մը պիտի բերէ. ո Եւ քահանան քաւութիւն պիտի ընէ սխալմամբ մեղք գործող անձին համար.
երբոր Տէրոջը առջեւ մեղք գործէ,
անոր համար քաւութիւն պիտի ընէ, ու անոր թողութիւն ըլլայ ։
29 ւ Սխալմամբ մեղք գործողին համար՝ թէ Իսրայէլի որդւոց մէջի
բնակին համար՝ և թէ անոնց մէջը
պանդխտացած օտարականին համար, մէկ օրէնք պիտի ունենաք ։
30 ղ Բայց այն անձը որ * յանդգնութեամբ բան մը կ'ընէ, թէ երկրին
բնակը ըլլայ՝ և թէ օտարական,
անիկայ Տէրը կը նախատէ. այն
անձը իր ժողովուրդին մէջէն պիտի
31 կորսուի ։ չ Տէրոջը խօսքը արհամարհելուն ու անոր պատուիրանքը
զանց ընելուն համար՝ այն անձը
անշուշտ պիտի կորսուի. ~ անոր
անօրէնութիւնը իր վրան պիտի
ըլլայ ։
32 Եւ երբ Իսրայէլի որդիքը անապատն էին, • մարդ մը գտան՝ որ
33 շաբաթ օրը փայտ կը ժողվէր ։ Եւ
անոնք որ փայտ ժողվելու վրայ
գտան զանիկայ, Մովսէսին ու
Ահարոնին և բոլոր ժողովքին առ-
34 ջեւ բերին ։ Եւ հ բանտարկեցին
զանիկայ. ինչու որ անոր ինչ ընե-
35 լիքնին որոշուած չէր ։ Եւ Տէրը
ըսաւ Մովսէսին. ա Այն մարդը անպատճառ պիտի մեռցուի. բոլոր
ժողովքը բանակէն դուրս ր քարերով պիտի քարկոծեն զանիկայ ։
36 Եւ բոլոր ժողովքը Տէրոջը Մովսէսին պատուիրածին պէս՝ բանակէն
դուրս հանեցին զանիկայ, և քարերով քարկոծեցին, ու մեռաւ ։
37 Եւ Տէրը խօսեցաւ Մովսէսին՝
38 ըսելով. Խօսէ Իսրայէլի որդւոցը
ու ըսէ ջ անոնց, որ իրենց ծոպեր
շինեն իրենց հանդերձներուն քղանցքներուն վրայ՝ իրենց ազգերուն մէջ. ու քղանցքի ծոպերուն
վրայ կապոյտ ժապաւէն մը դնեն.
39 Եւ այն ձեզի ծոպ պիտի ըլլայ, որ
դուք տեսնէք զայն՝ ու Տէրոջը բոլոր պատուիրանքները միտքերնիդ
բերէք, և ընէք անոնք. ու ~ ձեր
սրտերուն և ձեր աչքերուն ցանկութեանը չհետեւիք՝ որոնց ետեւէն
40 դուք ‡ † կը մոլորիք. Անանկ որ
միտքերնիդ բերէք՝ ու ընէք իմ
բոլոր պատուիրանքներս, ու + սուրբ

ւ Ղև. դ. 27, 28 ։
ո Ղև. դ. 35 ։
ւ Հմր 15 ։
ղ Բ Օր. ժէ. 12 ։ Սաղ. ժթ. 13 ։ Եբր. ժ. 26 ։ Բ Պետ. բ. 10 ։
* Եբր. բարձր ձեռքով
չ Բ Թագ. ժբ. 9 ։ Առակ. ժգ. 13 ։
~ Ղև. ե. 1 ։ Եզեկ. ժը. 20 ։
• Ել. լա. 14, 15 ։ լե. 2, 3 ։
հ Ղև. իդ. 12 ։
ա Ել. լա. 14, 15 ։
ր Ղև. իդ. 14 ։ Գ Թագ. իա. 13 ։ Գործ. է. 58 ։
ջ Բ Օր. իբ. 12 ։ Մատ. իգ. 5 ։
~ Տես Բ Օր. իթ. 19 ։ Յոբ. լա. 7 ։ Երեմ. թ. 14 ։ Եզեկ. զ. 9 ։
‡ Սաղ. հգ. 27 ։ ճզ. 39 ։ Յակ. դ. 4 ։
† Եբր. պոռնկութիւն կ'ընէք ։
+ Ղև. ժա. 44, 45 ։ Հռոմ. ժբ. 1 ։ Կող. ա. 22 ։ Ա Պետ. ա. 15, 16 ։

Ն. Ք. Գ. Ք.
1490

ըլլաք ձեր Աստուծոյն առջեւ ։
41 Ես եմ ձեր Տէր Աստուածը, որ ձե-
զի Աստուած ըլլալու համար՝ ձեզ
Եգիպտոսի երկրէն հանեցի . ես եմ
Եհովայ՝ ձեր Աստուածը ։

ԳԼ. ԺԶ

1 Կորխին, Դաթանին և Աբիրոնին ապստամ-
բութիւնը ։ 23 Մովսէս կը զատէ ժողովուր-
դը ապստամբներուն վրաններէն ։ 31 Երկիրը
կը կլլէ Կորխը՝ որուն ընկերները կրակով կը
սպառին ։ 36 Բուրվառները սուրբ բանի
գործածուելու համար կը պահուին ։ 41 Տասն-
ուչորս հազար եօթը հարիւր հոգի՝ Մովսէ-
սին ու Ահարոնին դէմ տրտունջ ընելնուն հա-
մար, ժանտախտով կը մեռնին ։ 46 Ահարոն
խունկ ծխելով՝ ժանտախտը կը դադրեցնէ ։

Իբր 1471
ա Ել. Զ. 21 ։
Գլ. ԻԶ. 9 ։
ԻԷ. 3 ։ Յուդ.
11 ։
* Եբր. առին,
բ Գլ. ԻԶ. 9 ։

1 Եւ Ղեւիի որդւոյն Կահաթի որ-
դւոյն Իսահառին որդին աԿոր-
խը՝ և Ռուբէնի որդւոցմէ Եղիա-
բին որդիքը Դաթանը ու Աբի-
րոնը՝ և Փաղեթին որդին Օնը *ե-
2 լան, Եւ Իսրայէլի որդւոցմէ երկու
հարիւր յիսուն հոգի բժողովքի
խորհրդական գլխաւորներ՝ ու ա-
նուանի մարդիկներ Մովսէսին ու-
3 նելով՝ Մովսէսին առջեւ եկան, Եւ
գՄովսէսին ու Ահարոնին վրայ
ժողովուեցան, ու ըսին անոնց .
Ալ հերիք է ըրածնիդ . ինչու որ
դբոլոր ժողովրդը ամէնքն ալ սուրբ
են, եև Տէրը անոնց մէջն է . և ինչու
Տէրոջը ժողովուրդին վրայ դուք
4 ձեզ կը բարձրացնէք ։ Եւ երբ
Մովսէս զայս լսեց, զիր երեսին վրայ
5 ինկաւ . Ու խօսեցաւ Կորխին և ա-
նոր բոլոր ժողովքին՝ ըսելով . Վա-
ղը Տէրը պիտի ցուցնէ թէ որն է
իրը, և որն է հսուրբը, ու զանիկայ
իրեն պիտի մօտեցնէ . և որն որ
ինքը էընտրած է, ըիրեն պիտի
6 մօտեցնէ ։ Ա՛ս ըրէք . առէք
ձեզի բուրվառներ, դուն ո՛վ Կորխ՝
7 և քու բոլոր ժողովքդ . Եւ վաղը
անոնց մէջը կրակ դրէք, ու Տէ-
րոջը առջեւը անոնց վրայ խունկ
դրէք . և սուրբը անիկայ ըլլայ,
որն որ Տէրը կ'ընտրէ . ալ հերիք
է ըրածնիդ՝ ո՛վ Ղեւիի որդիքը ։
8 Եւ Մովսէս ըսաւ Կորխին . Լսեցէք՝
9 ո՛վ Ղեւիի որդիքը . ժՊզտի՞կ բան
կ'երեւնայ ձեզի՝ որ Իսրայէլին Աս-
տուածը ձեզ իրեն մօտեցնելու
համար՝ իԻսրայէլի ժողովքէն զա-
տեց ձեզ, որ Տէրոջը խորանին
պաշտօնը ընէք, և ժողովքին առ-
ջեւը կայնիք՝ անոնց սպասաւորու-
10 թիւնը ընելու . Եւ քեզ ու քեզի
հետ քու բոլոր եղբայրներդ Ղեւիի
որդիքը իրեն մօտեցուց, ու դուք
քահանայութի՞ւն ալ կը փնտռ-
11 ռէք ։ Ուրեմն դուն՝ ու քու բո-
լոր ժողովքդ Տէրոջը դէմ ժող-
վուեցաք . լև Ահարոնը ո՞վ է՝ որ
անոր դէմ դուք տրտունջ կ'ընէք ։

գ Սաղ. ճզ.
16 ։
դ Ել. ԺԹ.
6 ։
ե Ել. ԻԹ.
45 ։ Գլ. Ժե.
14 ։ ԼԵ. 34 ։
զ Գլ. Ժե.
5 ։ Ի. 6 ։
է Հմմ 3 ։ Ղե.
Ւա. 6, 7,
8, 12, 15 ։
ը Ել. Իը. 1 ։
Գլ. ԺԷ. 5 ։
Ա Թագ. Բ.
28 ։ Սաղ.
ճե. 26 ։
թ Գլ. Գ. 10 ։
Ղե. Ժ. 3 ։
Իա. 17, 18 ։
Եզեկ. Խ.
46 ։ Խդ. 15,
16 ։
ժ Ա Թագ.
ԺԸ. 23 ։ Եփ.
Է. 13 ։
ի Գլ. Գ. 41,
45 ։ Ը. 14 ։
Բ Օր. Ժ. 8 ։
լ Ել. ԺԶ. 8 ։
Ա Կոր. Գ.
5 ։

Ն. Ք. Գ. Ք.
Իբր 1471

12 Եւ Մովսէս՝ Եղիաբին որդիքը Դա-
թանը ու Աբիրոնը կանչելու հա-
մար մարդ ղրկեց . և անոնք ըսին .
13 Չենք ելլեր . Մեզ անապատին
մէջ մեռցնելու համար՝ կաթ ու
մեղր բղխող երկրէ մը մեզ հանելը
խպքի՞չ բան է, որ նաև ծմեր վրայ
14 իշխան ըլլալ կ'ուզես ։ Եւ մեզ
նկաթ ու մեղր բղխող երկիր մը չը-
տարիր, ո՛չ ալ մեզի արտի ու
այգիի ժառանգութիւն տուիր .
միթէ աս մարդոցը աչքե՞րը պիտի
15 հանես . մենք չենք ելլեր ։ Եւ
Մովսէս խիստ բարկացաւ, ու ըսաւ
Տէրոջը . կՄի նայիր անոնց ընծա-
ներուն . յանոնցմէ էշ մը՛ն ալ չա-
ռի, և անոնց մէկուն անիրաւու-
16 թիւն չըրի ։ Եւ Մովսէս ըսաւ
Կորխին . Նվաղը դուն ու քու բո-
լոր ժողովքդ եՏէրոջը առջեւը ներ-
կայանաք, դուն՝ և անոնք՝ ու Ա-
17 հարոնը . Եւ առէք ամէն մէկերնիդ
ձեր բուրվառները, ու անոնց մէջը
խունկ դրէք, և ամէն մէկը իր
բուրվառը առնելով՝ այսինքն երկու
հարիւր յիսուն բուրվառները, և
դուն ալ ու Ահարոնը ամէն մէկեր-
նիդ ձեր բուրվառները Տէրոջը առ-
18 ջեւը մօտեցուցէք ։ Եւ ամէն մէկը
իր բուրվառը առնելով՝ անոնց
մէջը կրակ դրին, ու անոնց վրայ
խունկ դրին, և ժողովքի խորանին
դուռը կայնեցան Մովսէսին ու
19 Ահարոնին հետ ։ Եւ Կորխը անոնց
դէմ ժողովքի խորանին դուռը
ժողվեց բոլոր ժողովքը . ու ՐՏէ-
րոջը փառքը բոլոր ժողովքին ե-
րեւցաւ ։
20 Եւ Տէրը խօսեցաւ Մովսէսին ու
21 Ահարոնին՝ ըսելով . ցԱտ ժողովքին
մէջէն զատուեցէք, որ ւշուտով
22 կորսընցընեմ ատոնք ։ Բայց ա-
նոնք ւերեսնուն վրայ ինկան՝ ու
ըսին . Ո՛վ Աստուած՝ փբոլոր
†մարդոց հոգիներուն Աստուածը,
մէկ մարդուն մեղանչելովը՝ բոլոր
ժողովքի՞ն վրայ պիտի գայ քու
բարկութիւնդ ։
23 Եւ Տէրը խօսեցաւ Մովսէսին՝ ը-
24 սելով . Խօսէ ժողովքին՝ ու ըսէ .
Կորխին՝ Դաթանին ու Աբիրոնին
բնակութեանը բոլորտիքէն հեռա-
25 ցէք ։ Եւ Մովսէս ելաւ, ու Դա-
թանին և Աբիրոնին գնաց, և Իս-
րայէլի ծերերը անոր ետեւէն գացին .
26 Եւ խօսեցաւ ժողովքին՝ ըսելով .
ՔԱտ չար մարդոցը վրաններուն
քովէն ետ քաշուեցէք, ու անոնց
մէկ բանին մի՛ դպչիք, որ անոնց
27 բոլոր մեղքերովը չկորսուիք ։ Այս-
պէս անոնք Կորխին՝ Դաթանին ու
Աբիրոնին բնակութեանը բոլորտի-
քէն հեռացան . և Դաթանը ու

խ Հմր 9 ։
ծ Ել. Բ. 14 ։
Գոր. Է.
27, 35 ։
կ Ել. Գ. 8 ։
Ղե. Ի. 24 ։
հ Ծն. Դ. 4,
5 ։
յ Ա Թագ.
ԺԲ. 3 ։ Գոր.
Ի. 33 ։ Բ
Կոր. Է. 2 ։
ն Հմր 6, 7 ։
ճ Ա Թագ.
ԺԲ. 3, 7 ։
մ Հմր 42 ։ Ել.
ԺԶ. 7, 10 ։
Ղե. Թ. 6,
23 ։ Գլ.
ԺԴ. 10 ։
յ Հմր 45 ։
Ծն. ԺԹ.
17, 22 ։ Ե-
րեմ. ԾԱ.
6 ։ Գոր. Բ.
40 ։ Յայտ.
ԺԸ. 4 ։
ն Հմր 45 ։
Ել. ԼԲ. 10 ։
Լգ. 5 ։
շ Հմր 45 ։
Գլ. ԺԴ. 5 ։
ո Գլ. ԻԷ. 16 ։
Յոբ. ԺԲ.
10 ։ Ժող.
ԺԲ. 7 ։ Եսա.
ԺԷ. 16 ։
Զաք. ԺԲ.
1 ։ Եբր.
ԺԲ. 9 ։
† Եբր. մար-
մնի
չ Ծն. ԺԹ.
12, 14 ։ Եսա.
ԾԲ. 11 ։ Բ
Կոր. Զ. 17 ։
Յայտ. ԺԸ.
4 ։

Ն. Ք. ԳՓ. ԻՐՐ 1471

ղ Ել. գ. 12: ր Օր. ժր. 22: Ջաք. բ. 9. 10: գ. 9: Յոհ. ե. 36:
Հ Գւ. իդ. 13: Երեմ. իգ. 16: Եզեկ. ժգ. 17: Յոհ. ե. 30: զ. 38:
– Յոբ. լա. 3: Եւ. իբ. 21:
*Եբր. ստեղծագործութիւն:
Հմր 33: Սաղ. ծե. 15:
Հ Գւ. իզ. 10: իէ. 3: բ Օր. ժա. 6: Սաղ. ճզ. 17:
Տես Հմր 17: Գւ. իզ. 11: ա Մն. զ. 22. 37:
ր Ղև. ժ. 2: Գւ. ժա. 1: Սաղ. ճզ. 18:
ց Հմր 17:
– Տես Ղև. իէ. 28:
Առակ. ի. 2: Ամբ. բ. 10:
+ Գւ. ժէ. 10: իզ. 10: Եզեկ. ժդ. 8:
• Գւ. գ. 10: բ Մն. իզ. 18:
Գւ. ժդ. 2: Սաղ. ճզ. 25:

Աբիրոնը և անոնց կնիկները՝ ու
անոնց որդիքը և ընտանիքը՝ իրենց
վրաններուն դուռը ելան կայնե-
28 ցան ։ Եւ Մովսէս ըսաւ . ղԱսով
պիտի գիտնաք թէ Տէրն է իս
խրկողը բոլոր աս գործերը ընե-
լու , և չէ թէ Հես ինծմէ բան
29 մը ըրի . Ասոնք՝ թէ որ ասոնք
ամէն մարդու մեռնելուն պէս
մեռնին , և թէ որ ամէն մարդու
պատահածը ասոնց ալ պատահի ,
30 Տէրը իս խրկած չէ ։ Բայց թէ որ
Տէրը –*հրաշք մը ընէ , և երկիրը
իր բերանը բանայ , ու զանոնք և
անոնց բոլոր ունեցածը կլլէ , ու ա-
նոնք "ողջ ողջ դժոխքը իջնեն , ան
ատենը պիտի գիտնաք որ աս մար-
31 դիկը Տէրը անարգեցին ։ Հեւ եղաւ
որ աս բոլոր խօսքերը խօսիլը լմըն-
ցուցածին պէս , անոնց տակի գե-
32 տինը պատռեցաւ . Եւ երկիրը իր
բերանը բացաւ , ու զանոնք և ա-
նոնց տուները ու Կորխին ունեցած
բոլոր մարդիկը և բոլոր անոնց ինչ-
33 քը կլլեց ։ Եւ անոնք ու բոլոր ա-
նոնց ունեցածը ողջ ողջ դժոխքը
իջան . և երկիրը ծածկեց զանոնք ,
ու ժողովքին մէջէն կորսուեցան ։
34 Եւ անոնց բոլորտիքը եղած բոլոր
Իսրայէլը անոնց ձայնէն փախան .
քանզի ըսին . Չըլլայ որ երկիրը
35 մեզ ալ կլլէ ։ Եւ ր Տէրոջմէն կրակ
ելաւ , ու ց խունկ մատուցանող եր-
կու հարիւր յիսուն հոգին սպա-
ռեց ։
36 Եւ Տէրը խօսեցաւ Մովսէսին՝ ը-
37 սելով . Խօսէ՛ Ահարոն քահանային
որդւոյն Եղիազարին՝ որ բուրվառ-
ները ան այրումին մէջէն վերցընէ .
և դուն անոնց մէջը եղած կրակը ան-
դին ցրուէ . քանզի –անոնք սուրբ
38 եղան ։ Աս Հ իրենց հոգիներուն դէմ
մեղք գործողներուն բուրվառներէն
թիթեղներ շինեն՝ սեղանը պատե-
լու համար . ինչու որ անոնք Տէ-
րոջը առջևը մատուցուելով՝ սուրբ
եղած են . +և Իսրայէլի որդւոցը
39 նշան պիտի ըլլան ։ Ու Եղիազար
քահանան ան այրուած մարդոցը
մատուցած պղնձէ բուրվառները
առաւ . և զանոնք սեղանը պատե-
լու համար թիթեղներ շինեցին .
40 ( Իսրայէլի որդւոցը յիշատակ ըլ-
լալու համար , •որ Ահարոնի սերուն-
դէն չեղող օտար մէկը՝ Տէրոջը
առջևը խունկ մատուցանելու չմօ-
տենայ , և Կորխին պէս ու անոր
ժողովքին պէս չըլլայ . ) ինչպէս որ
Տէրը ըսաւ անոր՝ Մովսէսին ձեռ-
քովը ։
41 Եւ հետևեալ օրը Իսրայէլի որ-
դւոցը բոլոր ժողովքը Մովսէսին
դէմ ու Ահարոնին դէմ տրտունջ
ըրին՝ ըսելով . Դուք Տէրոջը ժողո-
42 վուրդը մեռցուցիք ։ Եւ եղաւ որ
երբ ժողովքը Մովսէսին ու Ահարո-
նին դէմ ժողվուած էին , դէպ'ի
ժողովքի խորանը նայեցան , և ահա
–ամպը ծածկեց ան , ու Բ Տէրոջը
43 փառքը երևցաւ ։ Եւ Մովսէս ու
Ահարոն ժողովքի խորանին առջևը
44 եկան ։ Եւ Տէրը խօսեցաւ Մովսէ-
45 սին՝ ըսելով . Աս ժողովքին մէջէն
ելէք , որ շուտով սպառեմ զա-
նոնք . և Տ ասոնք երեսնուն վրայ
ինկան ։
46 Եւ Մովսէս ըսաւ Ահարոնին .
Բուրվառ մը առ , ու մէջը սեղա-
նին վրայէն կրակ դիր , և վրան
խունկ դիր , ու շուտով ժողովքը
գնա , ու անոնց համար քաւու-
թիւն ըրէ , Ե ինչու որ Տէրոջմէն
բարկութիւն ելաւ . ժանտախտը
47 սկսաւ ։ Եւ Ահարոն Մովսէսին ը-
սածին պէս՝ բուրվառ մը առաւ , ու
ժողովքին մէջը վազեց , և ահա
ժանտախտը սկսած էր ժողովուր-
դին մէջը , և վրան խունկ դրաւ , ու
ժողովուրդին համար քաւութիւն
48 ըրաւ . Եւ մեռելներուն ու ողջե-
րուն մէջտեղը կայնեցաւ , ու ժանտ-
49 ախտը դադարեցաւ ։ Եւ ժանտ-
ախտէն մեռածները տասնուչորս
հազար եօթը հարիւր հոգի էին ,
Կորխի բանին համար մեռածներէն
50 զատ ։ Եւ Ահարոն դարձաւ Մով-
սէսին՝ ժողովքի խորանին դուռը ,
ու ժանտախտը դադարեցաւ ։

## ԳԼ. ԺԷ

1 Տասուերկու ցեղերուն գաւազաններուն մէջը՝ Ահարոնին գաւազանը կը ծաղկի , 10 ու ժողովուրդին ապստամբներուն դէմ վկայութիւն ըլլալու համար կը պահուի ։

1 Եւ Տէրը խօսեցաւ Մովսէսին՝ ըսե-
2 լով . Խօսէ Իսրայէլի որդւոցը , ու
անոնցմէ իրենց հարցը տուներուն
համեմատ մէյմէկ գաւազան՝ այսինքն
իրենց հարցը տուներուն բոլոր իշ-
խաններէն տասուերկու գաւազան
առ . ամէն մարդուն անունը իր
3 գաւազանին վրայ գրէ՛ ։ Եւ Ահա-
րոնին անունը Ղևիին գաւազանին
վրայ պիտի գրես . ինչու որ անոնց
հայրերուն տանը իշխանին համար
4 մէկ գաւազան պիտի ըլլայ . Եւ
զանոնք ժողովքի խորանը՝ վկայու-
թիւնին առջևը դնես , –ուր որ ձե-
5 զի պիտի հանդիպիմ ։ Եւ պիտի ըլ-
լայ որ՝ Բ իմ ընտրած մարդուս գա-
ւազանը պիտի ծաղկի . ու պիտի
դադրեցընեմ ինծմէ Իսրայէլի որ-
դւոցը տրտունջը՝ Գ որոնք կը տրտըն-
6 ջեն ձեր վրայով ։ Եւ Մովսէս խօ-
սեցաւ Իսրայէլի որդւոցը . ու ա-
նոնց բոլոր իշխանները իրենց հարցը
տուներուն համեմատ՝ տասուերկու

Ն. Ք. ԳՓ. ԻՐՐ 1471

– Ել. խ. 34:
Բ Հմր 19: Գւ. ի. 6:
Գ Հմր 21. 24:
Տ Հմր 22: Գւ. ի. 6:
Ե Ղև. ժ. 6: Գւ. ա. 53: ը. 19: ժա. 33: ժր. 5: ա Մն. իէ. 24: Սաղ. ճզ. 29:
– Ել. իե. 22: իթ. 42. 43: լ. 36:
Բ Գւ. ժզ. 5:
Գ Գւ. ժզ. 11:

Ն․ Ք․ ԴՖ․ ԻՐ 1471

գաւազան տուին անոր , ամէն մէկ
իշխանին համար մէյմէկ գաւազան .
և Ահարոնին գաւազանը անոնց գա-
7 ւազաններուն մէջն էր ։ Եւ Մով-
սէս գաւազանները Տէրոջը առջևը
դրաւ՝ ᵃվկայութեան խորանին մէջ ։
8 Եւ եղաւ որ հետևեալ օրը Մովսէս
վկայութեան խորանը մտաւ . և
ահա Ղևիի տանը կողմէն ᵇդրուած
Ահարոնին գաւազանը ծաղկեցաւ ,
ու ծլեցաւ , և ծաղիկ բացաւ , ու
9 նուշեր հասցուց ։ Եւ Մովսէս բո-
լոր գաւազանները Տէրոջը առջևէն
դուրս հանեց Իսրայէլի բոլոր որ-
դւոցը առջևը . ու անոնք տեսան ,
և ամէն մէկը իր գաւազանը առաւ ։
10 Եւ Տէրը ըսաւ Մովսէսին . ᵇԱհա-
րոնին գաւազանը վկայութիւնին
առջևը ետ դարձուր , ᶜոր ապըս-
տամբներուն նշան ըլլալու համար
պահուի . ᵈու անոնց տրտունջը ինծ-
11 մէ վերցընես , որ չմեռնին ։ Եւ Մով-
սէս Տէրոջը իրեն պատուիրածին
12 պէս ըրաւ , անանկ ըրաւ ։ Եւ Իսրա-
յէլի որդիքը խօսեցան Մովսէսին՝
ըսելով . Ահա կը մեռնինք , կը
կորսուինք . մենք ամէնքս կը կոր-
13 սուինք . Ամէն ով որ ᵉՏէրոջը խո-
րանին մօտենայ՝ կը մեռնի . ամէնքս
ալ պիտի մեռնի՞նք ։

ᵃ Ել. ԼԸ. 21 ։ Թուոց ԺԸ. 2 ։ Գործ. Է. 44 ։
ᵇ Եբր. Թ. 4 ։
ᶜ Գլ. ԺԶ. 38 ։
ᵈ Հմր 5 ։
ᵉ Գլ. Ա. 51, 53 ։ ԺԸ. 4, 7 ։

## ԳԼ. ԺԸ

1 Քահանայից ու Ղևտացւոց յանձնուած պահ-
պանութիւնը ։ 9 Քահանայից բաժինը , 21
Ղևտացւոց բաժինը ։ 25 Ղևտացւոց բաժինէն
բարձրացընելու ընծան քահանայից իրա-
ւունքը կ՚ըլլար ։

1 Եւ Տէրը ըսաւ Ահարոնին . ᵃԴուն՝
ու քեզի հետ քու որդիքդ՝ և
քու հօրդ տունը՝ ᵇսրբարանին ա-
նօրէնութիւնը պիտի կրէք . և
դուն ու քեզի հետ քու որդիքդ
ձեր քահանայութեանը անօրէնու-
2 թիւնը պիտի կրէք ։ Եւ քու հօրդ
ցեղէն՝ ᶜայսինքն Ղևիին ցեղէն եղող
քու եղբայրներդ մօտեցընես , որ
ᵈքեզի հետ միանան , ու ᵉքեզի
սպասաւորութիւն ընեն . և ᶠդուն
ու քեզի հետ քու որդիքդ վկայու-
թեան խորանին առջևը պիտի ըլլաք ։
3 Եւ քու պահպանութիւնդ ու բոլոր
ᵍխորանին պահպանութիւնը պիտի
պահեն . ʰմիայն թէ սրբարանին
անօթներուն ու սեղանին չմօտե-
նան , ⁱոր ոչ անոնք մեռնին՝ ոչ ալ
4 դուք ։ Եւ անոնք ձեզի հետ պիտի
միանան , ու ժողովքի խորանին
պահպանութիւնը պիտի պահեն՝
խորանին ամէն պաշտօնին նայելով .
ʲև օտար մէկը պիտի չմօտենայ ձե-
5 զի ։ Եւ ᵏսրբարանին պահպանու-
թիւնը ու սեղանին պահպանու-
թիւնը պիտի պահէք , ˡոր ալ Իսրա-
յէլի որդւոցը վրայ բարկութիւն

ᵃ Գլ. ԺԷ. 13 ։
ᵇ Ել. ԻԸ. 38 ։
ᶜ Տհս Ծն. ԻԹ. 34 ։
ᵈ Գլ. Դ. 6, 7 ։
ᵉ Գլ. Գ. 10 ։
ᶠ Գլ. Գ. 25, 31, 36 ։
ᵍ Գլ. ԺԶ. 40 ։
ʰ Գլ. Գ. 15 ։
ⁱ Գլ. Գ. 10 ։
ʲ Ել. ԻԷ. 21 ։ Ղ. 7 ։ Ղև. ԻԴ. 3 ։ Գլ. Ը. 2 ։
ᵏ Գլ. ԺԶ. 46 ։

6 չըլլայ ։ Եւ ահա ես Իսրայէլի որ-
դւոցը մէջէն ᵃձեր եղբայրները
Ղևտացիները առի . ᵇանոնք ձեզի
Տէրոջը համար պարգև տրուած են ,
որ ժողովքի խորանին պաշտօնը
7 ընեն ։ Եւ ᶜդուն ու քեզի հետ
քու որդիքդ սեղանին բոլոր բանե-
րուն համար և ᵈվարագոյրին մէջը
եղած բաներուն համար ձեր քա-
հանայութիւնը պիտի պահէք , ու
պաշտօնը կատարէք . ձեր քահա-
նայութիւնը ձեզի պարգևի պաշտօն
տուի , և մօտեցող օտարականը
պիտի մեռցուի ։
8 Եւ Տէրը խօսեցաւ Ահարոնին .
Եւ ᵉես ահա Իսրայէլի որդւոցը բո-
լոր սուրբ բաներէն իմ ընծաներուս
պահպանութիւնը քեզի տուի . և
անոնք ᶠօծման իրաւունքի համար
քեզի և քու որդւոցդ տուի յաւի-
9 տենական կանոնով ։ Ասոնք քուկդ
պիտի ըլլան ամենասուրբ բաներէն՝
*որ չեն այրուիր՝ . ᵍանոնց ամէն
հացի ընծաներուն՝ ʰանոնց ամէն
մեղքի պատարագներուն՝ և ⁱանոնց
ամէն յանցանքի պատարագներուն
բոլոր ընծաները՝ որ ինծի պիտի հա-
տուցանեն , ամենասուրբ են քեզի
10 ու քու որդւոցդ համար ։ ʲԱմենա-
սուրբ տեղին մէջ պիտի ուտես զան .
ամէն արու պիտի ուտէ զան . անի-
11 կայ սուրբ պիտի ըլլայ քեզի ։ Աս
ալ քուկդ պիտի ըլլայ . ᵏանոնց
պարգևներուն բարձրացընելու ըն-
ծան , և Իսրայէլի որդւոցը բոլոր
երերցընելու ընծաները . ˡքեզի՝ և
քեզի հետ քու որդւոցդ՝ ու քու
աղջիկներուդ տուի անոնք յաւի-
տենական կանոնով . ᵐքու տանդ
մէջ ամէն մաքուր եղողը անկէ պի-
12 տի ուտէ ։ ⁿԱմենէն աղէկ եղին՝
և ամենէն աղէկ գինիին ու ցորենին
բոլոր ᵒերախայրիները՝ որ Տէրոջը
պիտի մատուցանեն , քեզի տուի ։
13 Անոնց երկրին մէջ եղած ամէն ᵖբե-
րքերուն երախայրիները՝ ᵠոր Տէրոջը
պիտի բերեն , քուկդ պիտի ըլլան .
ʳքու տանդ մէջ ամէն մաքուր եղո-
14 ղը անկէ պիտի ուտէ ։ ˢԻսրայէլի
մէջ ամէն նուիրուած բան քուկդ
15 պիտի ըլլայ ։ Ամէն մարմինի ամէն
ᵗարգանդ բացողը որ Տէրոջը կ՚ըն-
ծայեն , թէ՛ մարդ ըլլայ և թէ ա-
նասուն՝ քուկդ պիտի ըլլայ . միայն
թէ ᵘմարդուն առջինեկը անշուշտ
պիտի փրկես . և անմաքուր անա-
սունին առջինեկն ալ պիտի փրկես ։
16 Ու երբոր փրկուելու ᵛմէկ ամ-
սուան ըլլան , սրբարանին սիկղին
համեմատ՝ ʷհինգ սիկղ արծաթի
գնով պիտի փրկես . ˣքսան
17 կերատ է ։ ʸԲայց կովին առջինե-
կը՝ և ոչխարին առջինեկը՝ կամ այ-

Ն․ Ք․ ԴՖ․ ԻՐ 1471

ᵃ Գլ. Գ. 12, 45 ։
ᵇ Գլ. Գ. 9 ։ Ը. 19 ։
ᶜ Հմր 5 ։ Գլ. Գ. 10 ։
ᵈ Եբր. Թ. 3, 6 ։
ᵉ Ղև. Զ. 16, 18, 26 ։ Է. 6, 32 ։ Գլ. Ե. 9 ։
ᶠ Ել. ԻԹ. 29 ։ Խ. 13, 15 ։
* Եբր. կրա-կէն .
ᵍ Ղև. Բ. 2, 3 ։ Ժ. 12, 13 ։
ʰ Ղև. Դ. 22, 27 ։ Զ. 25, 26 ։
ⁱ Ղև. Ե. 1 ։ Է. 7 ։ Ժ. 12 ։ ԺԴ. 13 ։
ʲ Ղև. Զ. 16, 15, 26, 29 ։ Է. 6 ։
ᵏ Ել. ԻԹ. 27, 28 ։ Ղև. Է. 30, 34 ։
ˡ Ղև. Ժ. 14 ։ Բ Օր. ԺԸ. 3 ։
ᵐ Ղև. ԻԲ. 2, 3, 11, 12, 13 ։
ⁿ Հմր 29 ։ Ել. ԻԳ. 19 ։ Բ Օր. ԺԸ. 4 ։ Նեեմ. Ժ. 35, 36 ։
ᵒ Ել. ԻԲ. 29 ։
ᵖ Ել. ԻԲ. 29 ։ ԻԳ. 19 ։ ԼԴ. 26 ։ Ղև. Բ. 14 ։ Գլ. ԺԵ. 19 ։ Բ Օր. ԻԶ. 2 ։
ᵠ Հմր 11 ։
ʳ Ղև. ԻԷ. 25 ։
ˢ Ել. ԺԳ. 2 ։ ԻՐ. 29 ։ Ղև. ԻԷ. 26 ։ Գլ. Գ. 13 ։
ᵗ Ել. ԺԳ. 13 ։ ԼԴ. 20 ։
ᵘ Ղև. ԻԷ. 6 ։ Գլ. Գ. 47 ։
ᵛ Ել. Լ. 13 ։ Ղև. ԻԷ. 25 ։ Գլ. Գ. 47 ։ Եզեկ. ԽԵ. 12 ։
ʷ Բ Օր. ԺԵ. 19 ։

Ն · Ք · ԳՔ · Իրր 1471

Ղև · Գ · 2, 5։
Ել · ԻԹ · 26, 28։ Ղև · Է · 31, 32, 34։
Համր 11։
Ղև · Բ · 13։ Բ Մն · ԺԳ · 5։
Բ Օր · Ժ · 9։ ԺԲ · 12։ ԺԴ · 27, 29։ ԺԸ · 1, 2։ Յես · ԺԳ · 14, 33։ ԺԴ · 3։ ԺԸ · 7։ Սաղ · ԺԶ · 5։ Եզեկ · ԽԴ · 28։
Համր 24, 26։ Ղև · ԻԷ · 30, 32։ Նեեմ · Ժ · 37։ ԺԲ · 44։ Եբր · Է · 5, 8, 9։
Գլ · Գ · 7, 8։
Գլ · Ա · 51։
Ղև · ԻԲ · 9։
Գլ · Գ · 7։
Համր 21։
Համր 20։ Բ Օր · Ժ · 9։ ԺԴ · 27, 29։ ԺԸ · 1։
Նեեմ · Ժ · 38։
Համր 30։

ծին առջինեկը պիտի չփրկես, ա-
նոնք սուրբ են. անոնց արիւնը
սեղանին վրայ պիտի սրսկես, ու
անոնց ճարպը պիտի այրես անու-
շահոտ պատարագ ըլլալու Տէրոջը.
18 Եւ անոնց միսը քուկդ պիտի ըլլայ,
երերցնելու երբուծը ու աջ զիս-
19 տը քուկդ ըլլալուն պէս։ Սուրբ
բաներէն ամէն բարձրացընելու ըն-
ծաները՝ որ Իսրայէլի որդիքը Տէ-
րոջը կը մատուցանեն, քեզի և քե-
զի հետ քու որդիներուդ ու աղջիկ-
ներուդ տուի՝ յաւիտենական կա-
նոնով. անիկայ՝ Տէրոջը առջևը
քեզի՝ և քեզի հետ քու սերունդիդ՝
20 աղի ուխտ մըն է յաւիտեան։ Եւ
Տէրը ըսաւ Ահարոնին. Անոնց
երկրին մէջ դուն ժառանգութիւն
պիտի չունենաս, ու անոնց մէջտե-
ղը բաժին չունենաս. Իսրայէլի
որդւոցը մէջ քու բաժինդ ու ժա-
ռանգութիւնդ ես եմ։
21 Եւ ահա Իսրայէլի բոլոր տասա-
նորդը Ղևիի որդւոցը տուի ժա-
ռանգութեան համար՝ իրենց պաշ-
տօնին փոխարէն, ժողովքի խո-
րանին պաշտօնը ընելնուն համար։
22 Եւ Իսրայէլի որդիքը՝ ալ ժողովքի
խորանին պիտի չմօտենան, որ
23 մեղք չկրեն ու չմեռնին։ Եւ ժո-
ղովքի խորանին պաշտօնը Ղևտա-
ցիք պիտի ընեն, ու իրենց անօրէ-
նութիւնը իրենք պիտի կրեն. ա-
սիկայ ձեր ազգերուն մէջ յաւիտե-
նական կանոն պիտի ըլլայ, որ անոնք
Իսրայէլի որդւոցը մէջ ժառանգու-
24 թիւն չունենան։ Քանզի Իսրա-
յէլի որդւոցը տասանորդը՝ որոնք
Տէրոջը կ'ընծայեն, Ղևտացւոց
ժառանգութիւն տուի. աս պատ-
ճառով անոնց համար ըսի որ՝ Իս-
րայէլի որդւոցը մէջ ժառանգու-
թիւն չունենան։
25 Եւ Տէրը խօսեցաւ Մովսէսին՝ ը-
26 սելով. Այսպէս խօսէ Ղևտացւոց՝
ու ըսէ անոնց. Երբոր Իսրայէլի
որդւոցմէն տասանորդը առնէք՝ որն
որ անոնց կողմանէ ձեզի ժառան-
գութեան համար տուի, ան ատե-
նը անկէ՝ տասանորդին տասնե-
րորդ մասը բարձրացընելու ընծայ
27 պիտի մատուցանէք Տէրոջը։ Եւ
աս ձեր բարձրացընելու ընծան՝
կալի ցորենի պէս և հնձանի բերքի
28 պէս պիտի սեպուի ձեզի։ Այս-
պէս Իսրայէլի որդւոցմէ ձեր առած
բոլոր տասանորդներէն դուք ալ
բարձրացընելու ընծայ պիտի մա-
տուցանէք Տէրոջը. և անոնցմէ՝
Տէրոջը բարձրացընելու ընծան Ա-
հարոն քահանային պիտի տաք։
29 Բոլոր ձեզի եղած ընծաներէն՝ Տէ-
րոջը ամէն բարձրացընելու ընծան՝
բոլորովին անոր ամենալաւէն՝ ա-
նոր սուրբ մասէն պիտի մատու-
30 ցանէք։ Ուստի պիտի ըսես անոնց.
Երբոր անոր ամենալաւէն մատու-
ցանէք, ան ատենը ատիկա կալի
արդիւնքի պէս՝ ու հնձանի արդիւն-
քի պէս սեպուի Ղևտացիներուն։
31 Եւ ամէն տեղ պիտի ուտէք զան,
դուք ու ձեր ընտանիքները. վասն
զի ժողովքի խորանին մէջ ձեր
ըրած պաշտօնին փոխարէն՝ ձեր
32 վարձքն է ան։ Եւ անկէ ամենա-
լաւը մատուցանելէն ետքը՝ անոր
համար մեղք պիտի չկրէք, ու
Իսրայէլի որդւոցը սուրբ բաները
չպղծէք, որ չմեռնիք։

## ԳԼ. ԺԹ

1 Կարմիր երինջի մոխիրով շինուած մաքրութեան ջուրը։ 11 Անմաքուր մարդուն մաքրուելուն համար՝ ան ջուրին գործածութիւնը։

1 Եւ Տէրը խօսեցաւ Մովսէսին ու
2 Ահարոնին՝ ըսելով. Աս է օրէն-
քին կանոնը՝ որ Տէրը պատուիրեց՝
ըսելով. Խօսէ Իսրայէլի որդւոցը՝
որ քեզի կարմիր երինջ մը բերեն
անարատ ու անբիծ՝ որուն վրայ
3 լուծ դրուած չըլլայ։ Եւ Եղիազար
քահանային պիտի տաք անիկայ,
որ բանակէն դուրս հանէ, ու իր
4 առջևը մորթեն անիկայ։ Եւ Ե-
ղիազար քահանան իր մատովը ա-
նոր արիւնէն պիտի առնէ, ու դէպ
'ի ժողովքի խորանին առջևի կողմը
եօթը անգամ պիտի սրսկէ անոր
5 արիւնէն։ Ետքը իր աչքին առջևը
պիտի այրեն երինջը. անոր մոր-
թը ու միսը և անոր արիւնը աղբովը
6 մէկտեղ պիտի այրեն։ Եւ քա-
հանան պիտի առնէ եղևնին փայտ՝
զոպայ ու կրկնակի կարմիր, և ե-
րինջին այրուած կրակին մէջը պի-
7 տի նետէ։ Եւ քահանան իր
հանդերձները ու իր մարմինը ջրով
պիտի լուայ, ու ետքը բանակը
մտնէ. և քահանան մինչև իրիկուն
8 անմաքուր պիտի ըլլայ։ Եւ զա-
նիկայ այրողը իր հանդերձները ու
իր մարմինը ջրով պիտի լուայ, և
մինչև իրիկուն անմաքուր ըլլայ։
9 Եւ մաքուր մարդ մը երինջին մո-
խիրը պիտի ժողվէ, ու բանակին
դուրսի դին մաքուր տեղ մը դնէ.
և Իսրայէլի որդւոցը ժողովքին հա-
մար պիտի պահուի, մեղաց համար
10 մաքրութեան ջուր ըլլալու։ Եւ
երինջին մոխիրը ժողվողը իր հան-
դերձները պիտի լուայ, ու մինչև
իրիկուն անմաքուր ըլլայ. և ասի-
կայ Իսրայէլի որդւոցը ու անոնց
մէջ պանդխտացող օտարականին

Ն · Ք · ԳՔ · Իրր 1471

Համր 12։
Համր 27։
Մատ · Ժ · 10։ Ղուկ · Ժ · 7։ Ա Կոր · Թ · 13։ Ա Տիմ · Ե · 18։
Ղև · ԺԹ · 8։ ԻԲ · 16։
Ղև · ԻԲ · 2, 15։
Բ Օր · ԻԱ · 3։ Ա Թագ · Զ · 7։
Ղև · Դ · 12, 21։ ԺԶ · 27։ Եբր · ԺԳ · 11։
Ղև · Դ · 6։ ԺԶ · 14, 19։ Եբր · Թ · 13։
Ել · ԻԹ · 14։ Ղև · Դ · 11, 12։
Ղև · ԺԴ · 4, 6, 49։
Ղև · ԺԱ · 25։ ԺԵ · 5։
Եբր · Թ · 13։
Համր 13, 20, 21։ Գլ · ԼԱ · 23։

Ն. Ք. ԶՔ. ԹԻՒ 1471

համար՝ յաւիտենական կանոն պի-
տի ըլլայ ։
11 Բ Ով որ մեռած մարդու մը մար-
մինին դպչի, եօթը օր անմաքուր
12 պիտի ըլլայ ։ Գ Անիկայ *անով զին-
քը մաքրել պիտի տայ երրորդ օրը՝
և եօթներորդ օրը, և այնպէս մա-
քուր ըլլայ. բայց թէ որ չմաքրուի
երրորդ օրը ու եօթներորդ օրը՝
13 մաքուր պիտի չըլլայ ։ Ով որ մե-
ռած մարդու մը մարմինին դպչի՝
ու ինքզինքը չմաքրէ, Դ Տէրոջը խո-
րանը կը պղծէ. և ան անձը Իսրա-
յէլէն պիտի կորսուի. անոր վրայ
Ե մաքրութեան ջուրը չցրուելուն
համար՝ անիկայ անմաքուր է. Զ իր
անմաքրութիւնը տակաւին իր վը-
14 րան է ։ Վրանի մէջ մեռնող մար-
դուն համար օրէնքը աս է. ան
վրանին մէջ ամէն մտնողը՝ և ան
վրանին մէջ ամէն եղողը եօթը
15 օր անմաքուր պիտի ըլլայ ։ Եւ
ամէն Է բաց աման որ իր վրան
կապուած խուփ չունի, անմաքուր
16 պիտի ըլլայ ։ Եւ Ը ով որ դաշ-
տի վրայ սրով սպաննուածի
մը՝ կամ իր մահուամբ մեռածի մը՝
կամ մարդու ոսկորի մը՝ և կամ
գերեզմանի մը, եօթը օր անմաքուր
17 պիտի ըլլայ ։ Եւ անմաքուր եղո-
ղին համար՝ ան մեղաց մաքրու-
թեան համար Թ այրուած երինջին
մոխիրէն առնելով՝ամանի մը մէջ
18 վրան Ժ կենդանի ջուր դնեն. Եւ
մաքուր մարդ մը Ժա զոպայ պիտի
առնէ, ու ան ջուրը խոթէ, և վը-
րանին վրայ՝ ու բոլոր ամաններուն
վրայ՝ և հոն եղած մարդոց վրայ՝
ու ոսկորի մը կամ սպաննուածի
մը կամ մեռածի մը և կամ գերեզ-
մանի մը դպչողին վրայ պիտի սրս-
19 կէ ։ Եւ մաքուր մարդը պիտի սրսկէ
անմաքուրին վրայ երրորդ օրը՝ ու
եօթներորդ օրը. Ժբ և եօթներորդ
օրը զանիկայ պիտի մաքրէ, ան ալ
իր հանդերձները պիտի լուայ, ու
ջրով լուացուի, և իրիկունը մա-
20 քուր ըլլայ ։ Բայց ան մարդը՝ որ
անմաքուր ըլլալով չմաքրուիր, ան
անձը ժողովքին մէջէն պիտի կոր-
սուի. ինչու որ Ժգ Տէրոջը սրբարանը
պղծեց. անոր վրայ մաքրութեան
ջուրը չցրուեցաւ, անիկայ ան-
21 մաքուր է ։ Եւ յաւիտենական կա-
նոն մը ըլլայ անոնց, որ մաքրու-
թեան ջուրը սրսկողը իր լաթերը
պիտի լուայ. ու մաքրութեան ջու-
րին դպչողը մինչև իրիկուն անմա-
22 քուր պիտի ըլլայ ։ Եւ Ժդ անմա-
քուր անձը ինչ բանի որ դպչի, ան
ալ անմաքուր պիտի ըլլայ. ու
Ժե անոր դպչող մարդը մինչև իրիկուն
անմաքուր պիտի ըլլայ ։

Բ Հմր 16 ։ Ղև. իա. 1 ։ Գլ. ե. 2 ։ թ. 6, 10 ։ լա. 19 ։ Ողբ. դ. 14 Անգ. բ. 13 ։
Գ Գլ. լա. 19 ։ * Կմ՝ մաքրու-թեան ջրով
Դ Ղև. ժե. 31 ։
Ե Հմր 9 ։ Գլ. ը. 7 ։
Զ Ղև. է. 20 ։ իբ. 3 ։
Է Ղև. ժա. 32 ։ Գլ. լա. 20 ։
Ը Հմր 11 ։
Թ Հմր 9 ։
Ժ Ծն. իզ. 19 ։
Ժա Սաղ. ծա. 7 ։
Ժբ Ղև. ժդ. 9 ։
Ժգ Հմր 13 ։
Ժդ Անգ. բ. 13 ։
Ժե Ղև. ժե. 5 ։

ԳԼ. Ի

1 Իսրայէլի որդիքը Սին կու գան, ու հոն Մա-
րիամը կը մեռնի ։ 2 Ջուրի համար տրտունջ
կ'ընեն ։ 7 Մովսէս ժայռին զարնելով Մերի-
պայի մէջ ջուր կը բղխեցընէ ։ 14 Մովսէս
Կադեսէն դեսպաններ կը ղրկէ Եդովմի թա-
գաւորին՝ խնդրելով անկէ որ իր սահմանէն
անցնելու հրաման տայ Իսրայէլին. բայց աս
խնդիրքը չընդունուիր ։ 22 Ահարոն Հովր
լեռանը վրայ քահանայութիւնը իր որդւոյն
Եղիազարին կը յանձնէ, ու ինքը հոն կը մեռ-
նի ։

1 Եւ Ա Իսրայէլի որդւոցը բոլոր ժո-
ղովքը Սին անապատը եկան առ-
ջի ամսուն, ու ժողովուրդը Կա-
դեսի մէջ իջևան ըրաւ. և Բ Մա-
րիամ հոն վախճանեցաւ, ու հոն
թաղուեցաւ ։
2 Գ Եւ ժողովքին խմելու ջուր չկար.
Դ ու Մովսէսին և Ահարոնին վրայ
3 հաւաքուեցան ։ Եւ ժողովուրդը
Ե Մովսէսին հետ վիճելով՝ խօսեցան
ու ըսին. Երանի թէ մենք ալ
մեռնէինք՝ Զ երբոր մեր եղբայրները
4 մեռան Տէրոջը առջևը. Եւ Է ինչու
Տէրոջը ժողովուրդը աս անապատը
բերիք, որ մենք ու մեր անասուն-
5 ները հոս մեռնինք ։ Եւ ինչու
մեզ Եգիպտոսէն հանեցիք՝ մեզ աս
գէշ տեղը բերելու համար. հոս ոչ
սերմ ցանելու տեղ է, ոչ ալ թզե-
նիներու ու այգիներու և նռնենի-
ներու. խմելու ջուր անգամ չկայ ։
6 Եւ Մովսէս ու Ահարոն ժողովքին
առջևէն ելլելով՝ ժողովքի խորանին
դուռը գացին, ու Ը իրենց երեսին
վրայ ինկան. և Թ Տէրոջը փառքը
անոնց երևցաւ ։
7 Եւ Տէրը խօսեցաւ Մովսէսին
8 ըսելով. Ժ Գաւազանը առ, ու ժո-
ղովքը ժողվէ, դուն ու քու եղ-
բայրդ Ահարոնը, և անոնց աչ-
քերուն առջևը խօսեցէք ապառա-
ժին, ու իր ջուրը պիտի տայ. և
Ժա դուն ապառաժէն ջուր պիտի հա-
նես անոնց, ու ժողովքին և ա-
նոնց անասուններուն խմցընես ։
9 Եւ Մովսէս առաւ գաւազանը Ժբ Տէ-
րոջը առջևէն, ինչպէս որ իրեն
10 պատուիրեց ։ Եւ Մովսէս ու Ա-
հարոն՝ ժողովքը ապառաժին առ-
ջևը ժողվեցին. և ըսաւ անոնց.
Ժգ Լսեցէք հիմա՝ ով ապստամբներ,
ձեզի աս ապառաժէ՞ն ջուր հա-
11 նենք ։ Եւ Մովսէս իր ձեռքը վեր-
ցուց, ու գաւազանը երկու ան-
գամ ապառաժին զարկաւ. և Ժդ ա-
ռատօրէն ջուր ելաւ. և ժողովքը
ու անոնց անասունները խմեցին ։
12 Եւ Տէրը խօսեցաւ Մովսէսին ու
Ահարոնին. Որովհետև Ժե ինծի չհա-
ւատացիք Ժզ Իսրայէլի որդւոցը աչ-
քերուն առջևը զիս † փառաւորելու,
անոր համար աս ժողովուրդը դուք
պիտի չտանիք ան երկիրը՝ որն որ

Ն. Ք. ԶՔ. ԹԻՒ 1453

Ա Գլ. լգ. 36 ։
Բ Ել. ժե. 20 ։ Գլ. իզ. 59 ։
Գ Ել. ժէ. 1 ։
Դ Գլ. ժզ. 19, 42 ։
Ե Ել. ժէ. 2 ։ Գլ. ժդ. 2 ։
Զ Գլ. ժա. 1, 33 ։ ժդ. 37 ։ ժզ. 32, 35, 49 ։
Է Ել. ժէ. 3 ։
Ը Գլ. ժդ. 5 ։ ժզ. 4, 22, 45 ։
Թ Գլ. ժդ. 10 ։
Ժ Ել. ժէ. 5 ։
Ժա Նեեմ. թ. 15 ։ Սաղ. հը. 15, 16 ։ ճե. 41 ։ ճժդ. 8 ։ Ես. խգ. 20 ։ խը. 21 ։
Ժբ Գլ. ժէ. 10 ։
Ժգ Սաղ. ճզ. 33 ։
Ժդ Ել. ժէ. 6 ։ Բ Օր. ը. 15 ։ Ա Կոր. ժ. 4 ։
Ժե Գլ. իէ. 14 ։ Բ Օր. ա. 37 ։ գ. 26 ։ լբ. 51 ։
Ժզ Ղև. ժ. 3 ։ Եզեկ. ի. 41 ։ լզ. 23 ։ լը. 16 ։ Ա Պետ. գ. 15 ։
† Եբր. սրբելու ։

Ն. Ք. Դ. Ք. 1453

Ել. ԺԷ. 7 ։ Բ Օր. ԼԳ. 8 ։ Սաղ. ՂԶ. 8 ։ ՃԶ. 32 ։
Յն՝ Վիճաբանութեան
Դատ. ԺԱ. 16, 17 ։
Բ Օր. Բ. 4 ։ Իգ. 7 ։ Արդ. 10, 12 ։
Ել. ԺԲ. 8 ։
Ծն. ԽԶ. 6 ։ Գործ. Է. 15 ։
Ել. ԺԲ. 40 ։
Ել. Ա. 11 ։ Բ Օր. ԻԶ. 6 ։ Գործ. Է. 19 ։
Ել. Բ. 23 ։ Գ. 7 ։
Ել. Գ. 2 ։ ԺԴ. 19 ։ ԻԳ. 20 ։ ԼԳ. 2 ։
Տես Դլ. ԻԱ. 22 ։ Բ Օր. Բ. 27 ։
Եբր. Ինծմէ
Բ Օր. Բ. 6, 28 ։
Դատ. ԺԱ. 17 ։
Տես Բ Օր. Բ. 27, 29 ։
Բ Օր. Բ. 4, 5, 8 ։ Դատ. ԺԱ. 18 ։
Գլ. ԼԳ. 37 ։
Գլ. ԻԱ. 4 ։
Ծն. ԻԵ. 8 ։ Գլ. ԻԷ. 13 ։ ԼԱ. 2 ։ Բ Օր. ԼԲ. 50 ։
Հմր 12 ։
Գլ. ԼԳ. 38 ։ Բ Օր. ԼԲ. 50 ։
Ել. ԻԹ. 29, 30 ։

13 անոնց տուի ։ *Մերիպայի ջուրը
այս է. վասն զի Իսրայէլի որդիքը
Տէրոջը դէմ վիճեցան և ինքը
փառաւորուեցաւ անոնց մէջ ։
14 Եւ Մովսէս Կադէսէն դեսպան-
ներ խրկեց Եդովմի թագաւորին
ըսելով. Այսպէս կ'ըսէ քու եղ-
բայրդ Իսրայէլ. Մեզի պատա-
հած բոլոր նեղութիւնը գիտես
15 Ինչպէս մեր հայրերը Եգիպտոս ի-
ջան, և բնակեցանք Եգիպտոսի
մէջ շատ ատեն. և Եգիպտացիք
չարչարեցին մեզ ու մեր հայրերը ։
16 Եւ երբ մենք Տէրոջը աղաղակե-
ցինք, լսեց մեր ձայնը. և հրեշ-
տակ մը խրկեց, ու մեզ Եգիպտո-
սէն հանեց. և ահա մենք քու սահ-
մանիդ ծայրի Կադէս քաղաքին
17 մէջն ենք. Շնորհք ըրէ՝ անց-
նինք քու երկրէդ. արտերէն ու
այգիներէն պիտի չանցնինք, և ջը-
հորերուդ ջուրը պիտի չխմենք.
արքունական ճամբայէն պիտի եր-
թանք, աջ կամ ձախ կողմը պիտի
չխոտորինք՝ մինչև որ քու սահմա-
18 նէդ անցնինք ։ Եւ Եդովմ ըսաւ
անոր. Իմ երկրէս պիտի չանցնիս,
հապա թէ չէ՝ սրով քու դէմդ
19 կ'ելլեմ ։ Եւ Իսրայէլի որդիքը ը-
սին անոր. Մենք մեծ ճամբայէն
կ'անցնինք, և թէ որ ես ու իմ ա-
նասուններս քու ջուրէդ խմենք.
անոր գինը կը հատուցանեմ. ա-
ռանց ուրիշ բան մը ընելու իմ ոտ-
20 քերովս կ'անցնիմ ։ Եւ անիկայ ը-
սաւ. Պիտի չանցնիս. և Եդովմ
մեծ բազմութիւնով ու հզօր ձեռ-
21 քով անոնց դէմ ելաւ ։ Այսպէս
Եդովմ իր սահմանէն Իսրայէլին
ճամբայ տալ չուզեց. ուստի Իս-
րայէլը դարձաւ անկէ ։
22 Եւ Կադէսէն չուեցին, ու Իս-
րայէլի որդւոց բոլոր ժողովքը
23 Հովր լեռը եկան ։ Եւ Տէրը խօ-
սեցաւ Մովսէսին ու Ահարոնին
Հովր լեռը՝ Եդովմի երկրին սահ-
24 մանին քով՝ ըսելով. Ահարոնը
իր ժողովուրդին պիտի խառնուի.
քանզի Մերիպայի ջուրին քով՝
իմ հրամանիս դէմ ապստամբու-
թիւն ընելնուդ համար՝ պիտի
չմտնէ այն երկիրը՝ որն որ Իսրայէլի
25 որդւոցը տուի ։ Ահարոնը ու անոր
որդին Եղիազարը առ, ու Հովր
26 լեռը հանէ զանոնք. Եւ Ահարոնը
իր զգեստներէն մերկացուր, ու ա-
նոր որդւոյն Եղիազարին հագցուր
զանոնք. ինչու որ Ահարոն իր ժո-
ղովուրդին պիտի խառնուի, ու հոն
27 մեռնի ։ Եւ Մովսէս Տէրոջը պա-
տուիրածին պէս ըրաւ. ու բոլոր
ժողովքին աչքին առջևը Հովր լեռը
28 ելան ։ Եւ Մովսէս մերկացուց
Ահարոնը իր զգեստներէն, ու անոր
որդւոյն Եղիազարին հագցուց զա-
նոնք. և Ահարոն հոն լեռանը
գլուխը մեռաւ. ու Մովսէս և Ե-
29 ղիազար լեռնէն իջան ։ Եւ երբ
բոլոր ժողովքը տեսան որ Ահարոնը
մեռաւ. Իսրայէլի բոլոր տունը Ա-
հարոնին համար երեսուն օր լացին ։

## ԳԼ. ԻԱ

1 Իսրայէլը քիչ մը վնաս քաշելով՝ Քանանացիները կը ջարդէ Հորմայի մէջ. 4 Ժողովուրդը տրտունջ ընելուն համար՝ կիզող օձերով կը փճացուի. 7 ու ետքը զղջալով՝ պղնձէ օձին միջոցովը կ'ազատի այս հարուածէն. 10 Իսրայէլացւոց այլ և այլ ճամբորդութիւնները ։ 21 Սեհոն թագաւորը պատերազմով անոնց վրայ կու գայ. ու կը յաղթուի. 33 Նոյնպէս ալ Ովգ թագաւորը.

1 Եւ հարաւային կողմը բնակող
Արադի Քանանացի թագա-
ւորը լսելով որ Իսրայէլը Աթարիմի
ճամբայէն կու գայ, Իսրայէլին հետ
պատերազմեցաւ, և անոնցմէ գերի-
2 ներ առաւ ։ Եւ Իսրայէլ ուխտ
ըրաւ Տէրոջը՝ ու ըսաւ. Թէ որ այս
ժողովուրդը իմ ձեռքս մատնես,
անոնց քաղաքները բոլորովին պի-
3 տի կորսընցընեմ ։ Եւ Տէրը Իս-
րայէլին ձայնը լսեց, ու Քանանա-
ցիները անոր ձեռքը մատնեց. և Իս-
րայէլը բոլորովին կորսնցուց զա-
նոնք՝ ու անոնց քաղաքները. և
այն տեղին անունը Հորմա դրաւ ։
4 Ու Եդովմի երկրին բոլորտիքէն
անցնելով՝ Հովր լեռնէն Կարմիր
ծովուն ճամբան չուեցին. ու ճամ-
բուն մէջ ժողովուրդին սիրտը նե-
5 ղացաւ ։ Եւ ժողովուրդը Աստու-
ծոյ դէմ ու Մովսէսին դէմ խօսե-
ցան՝ ըսելով. Ինչո՞ւ մեզ Եգիպ-
տոսէն հանեցիք՝ որ անապատին
մէջ մեռնինք. քանզի հաց չկայ,
ջուր չկայ. և այս չնչին հացէն մեր
6 սիրտը զզուեր է ։ Եւ Տէրը ժո-
ղովուրդին վրայ կիզող օձեր
խրկեց. ու խածին ժողովուրդը.
անանկ որ՝ Իսրայէլէն շատ ժողո-
7 վուրդ մեռաւ. Եւ ժողովուրդը
Մովսէսին եկան, ու ըսին. Տէ-
րոջը դէմ ու քեզի դէմ խօսելով-
նիս մեղանչեցինք. աղօթք ըրէ
Տէրոջը՝ որ մեր վրայէն օձերը վեր-
ցընէ. և Մովսէս ժողովուրդին հա-
8 մար աղաչեց. Եւ Տէրը ըսաւ Մով-
սէսին. Քեզի կիզող օձ մը շինէ, ու
զանիկայ ձողի մը վրայ դիր. և ըլլայ
թէ ով որ խածնուի, անոր նայի՝ ու
9 ապրի ։ Եւ Մովսէս պղնձէ օձ մը
շինեց, ու զանիկայ ձողի մը վրայ
դրաւ. և եղաւ որ՝ օձ մը երբոր
մարդ մը խածնէր, անիկայ պղնձէ
օձին նայածին պէս՝ կ'առողջանար ։
10 Եւ Իսրայէլի որդիքը չուեցին՝ ու
11 Ոբովթի մէջ իջեան ըրին. Եւ

Ն. Ք. Դ. Ք. 1453

Գլ. ԻԴ. 38 ։ Բ Օր. Ժ. 6 ։ ԼԲ. 50 ։

1452

Բ Օր. ԼԴ. 8 ։

1452

Գլ. ԼԳ. 40 ։ Տես Դատ. Ա. 16 ։
Կամ՝ Քանանիս
Ծն. ԻԸ. 20 ։ Դատ. ԺԱ. 30 ։
Կամ՝ պիտի նզովեմ ։
Յն՝ Նզովք ։
Դատ. ԺԱ. 18 ։
Գլ. Ի. 22 ։ ԼԳ. 41 ։
Ել. Զ. 9 ։
Սաղ. ՀԸ. 19 ։
Ել. ԺԶ. 3 ։ ԺԷ. 3 ։
Գլ. ԺԱ. 6 ։
Ա Կոր. Ժ. 9 ։
Բ Օր. Ը. 15 ։
Սաղ. ՀԸ. 34 ։
Հմր 5 ։
Ել. Ը. 8 ։ Ա Թագ. ԺԲ. 19 ։ Գ Թագ. ԺԳ. 6 ։ Գործ. Ը. 24 ։
Դ Թագ. ԺԸ. 4 ։ Յովհ. Գ. 14, 15 ։
Գլ. ԼԳ. 43 ։

Ն․ Ք․ ԱԶ․
1452

Ը Թւ․ ԼԳ 44․
Յ Բ Օր․ Բ․ 13․
Է Թւ․ ԻԸ․ 36․ Դատ․ ԺԱ․ 18․
Ճ Բ Օր․ Բ․ 18․ 29․
Ժ Դատ․ Թ․ 21․
Ա Ել․ ԺԵ․ 1․ Սաղ․ ԾԵ․ 2․ ԾԶ․ 12․
Ն Ես․ ԼԳ․ 22․
Լ Թւ․ ԻԳ․ 28․
* Կամ՝ անապատը
Մ Բ Օր․ Բ․ 26․ 27․ Դատ․ ԺԱ․ 19․
Լ Թւ․ Ի․ 17․
Դ Բ Օր․ ԻԹ․ 7․
Ե Բ Օր․ Բ․ 32․ Դատ․ ԺԱ․ 20․
Մ Բ Օր․ Բ․ 33․ ԻԹ․ 7․ Յես․ ԺԲ․ 1․ 2․ ԻԴ․ 8․ Նեեմ․ Թ․ 22․ Սաղ․ ՃԼԵ․ 10․ 11․ ՃԼԶ․ 19․ Ամով․ Բ․ 9․

Որովթէն չուեցին՝ ու Իյէաբարի-
մի մէջ դէպ 'ի արևելեան կողմը՝
Մովաբին դիմացի անապատին մէջ
12 իջևան ըրին ։ Յ Անկէ ալ չուեցին՝ և
Զարեդ ձորին մէջ իջևան ըրին ։
13 Անկէ չուեցին՝ ու իջևան ըրին
Առնոնին մէկալ կողմը ան անապա-
տին մէջ՝ որ Ամորհացւոց սահմա-
նէն կ'ելլէ ․ ինչու որ Է Առնոն՝ Մո-
վաբացւոց սահմանն է , Մովաբա-
ցւոց ու Ամորհացւոց միջտեղը ։
14 Անոր համար Տէրոջը պատերազմնե-
րուն գրքին մէջ կ'ըսուի ․
Սուփային մէջ Վահէպը՝ ու Առ-
նոնին գետերը ,
15 Եւ Արին կեցած տեղը վազող՝
Ճ ու Մովաբին սահմանը կայացող
գետերուն յորձանքը ։
16 Եւ անկէ Ժ Ջրհորը Է[լ]ան ․ աս ան
ջրհորն է՝ որուն համար Տէրը ըսեր
էր Մովսէսին ․ Ժողովուրդը ժողվէ ,
ու ես անոնց ջուր պիտի տամ ։
17 Ա Ան ատենը Իսրայէլը աս երգը եր-
գեց ․
Ո՛վ հոր՝ բղխէ ․ երգեցէ՛ք անոր ․
18 Հորը՝ իշխանները փորեցին , Ժո-
ղովուրդին ազնուականները Ն Օ-
րէնսդրին հրամանովը , իրենց
գաւազաններովը փորեցին ան ։
Եւ անապատէն դէպ 'ի Մաթանա,
19 Ու Մաթանայէն դէպ 'ի Նաալիէլ,
20 ու Նաալիէլէն դէպ 'ի Բամօթ , Եւ
Բամօթէն Մովաբի դաշտին մէջ
Լ դէպ 'ի * Եսիմոնը նայող Փասղա-
յին գագաթը եղած հովիտը [չուե]-
ցին ։
21 Մ Եւ Իսրայէլ դեսպաններ խրկեց
Ամորհացւոց Սեհոն թագաւորին՝ ը-
22 սելով ․ Լ Քու երկրէդ անցնինք ․
արտի կամ այգիի մէջ չենք մտներ ,
հորի ջուրէ չենք խմեր ․ մինչև քու
սահմանէդ անցնելնիս՝ արքունական
23 ճամբայէն կ'երթանք ։ Դ Եւ Սեհոն
իր սահմանէն ճամբայ չտուաւ
Իսրայէլին ․ հապա Սեհոն իր բոլոր
ժողովուրդը ժողվեց , և դէպ 'ի ա-
նապատ Իսրայէլին դէմը ելաւ , Եու-
Յասսա եկաւ , և Իսրայէլին հետ
24 պատերազմեցաւ ։ Եւ Մ Իսրայէլ
սուրի բերնէ անցուց զանիկայ , ու
տիրեց անոր երկրին , Առնոնէն
մինչև Յաբոկը՝ մինչև Ամմոնի
որդւոցը [սահմանը] ․ ինչու որ Ամմոնի
որդւոցը սահմանը դժուարին էր ։
25 Եւ Իսրայէլ աս բոլոր քաղաքները
առաւ ․ ու Իսրայէլ Ամորհացւոց
բոլոր քաղաքներուն մէջ բնակե-
ցաւ , Եսեբոնին մէջ՝ ու անոր բոլոր
26 գեղերուն մէջ ․ Քանզի Եսեբոնը Ա-
մորհացւոց Սեհոն թագաւորին
քաղաքն էր ․ ինչու որ անիկայ
Մովաբին առջի թագաւորին հետ
պատերազմելով , անոր ձեռքէն ա-

Ն․ Ք․ ԱԶ․
1452

Ս Երեմ․ ԽԸ․ 45․ 46․
Հ Բ Օր․ Բ․ 9․ 18․ Ես․ ԺԵ․ 1․
Փ Դատ․ ԺԱ․ 24․ Գ Թագ․ ԺԱ․ 7․ 33․ Դ Թագ․ ԻԳ․ 13․ Երեմ․ ԽԸ․ 7․ 13․
Ք Երեմ․ ԽԸ․ 18․ 22․
Ց Ես․ ԺԵ․ 2․
Ա Թւ․ ԼԲ․ 1․ Երեմ․ ԽԸ․ 32․
Է Բ Օր․ Գ․ 1․ ԻԹ․ 7․
Ը Յես․ ԺԳ․ 12․
Օ Բ Օր․ Գ․ 2․
Ֆ Հմր 24․ Սաղ․ ՃԼԵ․ 10․ 11․ ՃԼԶ․ 20․
Մ Բ Օր․ Գ․ 3․ 4․ ․․․

նոր բոլոր երկիրը մինչև Առնոն
27 առած էր ։ Անոր համար առակ
խօսողները կ'ըսեն ․
Եսեբոն եկէք ․ Թող Սեհոնին
քաղաքը շինուի ու պատրաս-
տուի ․
28 Վասն զի Ս Եսեբոնէն կրակ ելաւ ,
Եւ Սեհոնին քաղաքէն բոց ․ Հ Մո-
վաբին Արը այրեց , Եւ Առնոնին
բարձր տեղերուն տէրերը ։
29 Վա՜յ քեզ՝ Մովաբ , Փ ո՛վ Քա-
մովսի ժողովուրդը՝ կորսուեցար ․
Իր ազատուած որդիքը ու աղջիկնե-
րը Ամորհացւոց Սեհոն թագաւորին
գերութեան տուաւ ․
30 Զանոնք նետերով զարկինք ․ Ե-
սեբոնը կորսուեցաւ Ք մինչև Դե-
բոնը ․ և կործնցուցինք զանոնք
մինչև Ց Մեդաբային քովը եղած
Նոփան ։
31 Այսպէս Իսրայէլ Ամորհացւոց
32 երկիրը բնակեցաւ ։ Եւ Մովսէս
Ա Յազերը լրտեսելու Իսրայէլ խրկեց ,
ու անոր գեղերը առին , և հոն ե-
ղած Ամորհացիները վռնտեցին ։
33 Է Եւ դարձան ու Բասանի ճամ-
բան ելան ․ և Բասանի Ովգ թագա-
ւորը՝ ինքը ու իր բոլոր ժողովուրդը
անոնց դէմ Ը Եդրայիին մէջ պա-
34 տերազմի ելան ։ Եւ Տէրը ըսաւ
Մովսէսին ․ Օ Անկէ մի՛ վախնար ․
քանզի քու ձեռքդ մատնեցի զա-
նիկայ , ու անոր բոլոր ժողովուրդը ,
և անոր երկիրը ․ և Ֆ Եսեբոնին
մէջ բնակող Ամորհացւոց Սեհոն
թագաւորին ըրածիդ պէս պիտի ը-
35 նես անոր ։ Մ Այսպէս զարկին անի-
կայ , և անոր որդիքը , ու անոր
բոլոր ժողովուրդը ․ անանկ որ՝
մէկն ալ չմնաց ․ և անոր երկրին
տիրեցին ։

## ԳԼ․ ԻԲ

1 Բաղաամ՝ Բաղակին առջի անգամի հրաւէրքը կը մերժէ ․ 15 ու երկրորդ անգամին կ'ընդունի ․ 22 Հրեշտակ մը զանիկայ սպաննելու կ'ըլլայ , բայց իշուն ետ քաշուելովը անիկայ կ'ազատի ․ 36 Բաղակ կ'ընդունի Բաղաամը ։

1 Եւ Մ Իսրայէլի որդիքը չուեցին ,
ու Մովաբի դաշտերուն մէջ
Յորդանանու մէկալ կողմը Երիքովի
[դիմացը] իջևան ըրին ։
2 Եւ Բ Սեպփորին որդին Բաղակը
տեսաւ ան ամէնը՝ որ Իսրայէլ ըրաւ
3 Ամորհացւոց ։ Եւ Գ Մովաբ խիստ
վախցաւ ժողովուրդէն , ինչու որ
շատուոր էին ․ ու Մովաբ Իսրա-
յէլի որդւոցը երեսէն տագնապի
4 մէջ էր ։ Եւ Մովաբ Դ Մադիամու
ծերերուն ըսաւ ․ Հիմա աս ժողո-
վուրդը պիտի լզէն մեր բոլորտիքը
եղած ամէնը , ինչպէս որ արջառը
դաշտին խոտը կը լզէ ։ Եւ Սեպ-
փորին որդին Բաղակ՝ Մովաբին

Մ Թւ․ ԼԳ․ 48․
Բ Դատ․ ԺԱ․ 25․
Գ Ել․ ԺԵ․ 15․
Դ Թւ․ ԼԱ․ 8․ Յես․ ԺԳ․ 21․

Ն․ Ք․ ՂՔ․ 1452

* Կամ՝ Եւ Փաթուր գետեզրը դեսպաններ խրկեց Բէովրի որդւոյն Բաղաամին՝ որուն հայրենիքը Գետին եզերքն էր ։

ե Օր․ իգ․ 4 ։ Յես․ ժգ․ 22 ։ իդ․ 9 ։ Նեեմ․ ժգ․ 1, 2 ։ Միք․ զ․ 5 ։ Բ Պետ․ բ․ 15 ։ Յուդ․ 11 ։ Յայտ․ բ․ 14 ։

զ Տես վե․ իգ․ 7 ։ Բ Օր․ իգ․ 4 ։ է Գլ․ իգ․ 7 ։ ը Ա Թագ․ Թ․ 7, 8 ։

թ Հմր 19 ։

ժ Ծն․ ի․ 3 ։ Հմր 20 ։

ի Գլ․ իգ․ 20 ։ Տես Հռով․ ժա․ 29 ։

լ Հմր 6 ։

խ Գլ․ իդ․ 13 ։

5 թագաւորն էր ան ատենը ։ *Եւ
ե Բէովրի որդւոյն Բաղաամին դես-
պաններ խրկեց Փաթուր գաղաքը՝
(որ անոր ժողովուրդին որդւոցը
երկրին Գետին եզերքն էր", ) զա-
նիկայ կանչելու ու ըսելու ․ Ահա
Եգիպտոսէն ժողովուրդ մը ելաւ ․
ահա երկրի երեսը ծածկեց ․ և իմ
6 դիմացս կը նստի ․ Ուստի հիմա
կ'աղաչեմ՝ եկուր, զ ինծի համար
անիծէ աս ժողովուրդը ․ քանզի
անիկայ ինծմէ զօրաւոր է ․ գուցէ
կարող ըլլամ անիկայ զարնելու,
ու երկրէս վռնտեմ զանիկայ ․
վասն զի գիտեմ որ քու օրհնածդ
օրհնեալ է, և քու անիծածդ ա-
նիծեալ ։
7 Եւ Մովաբին ծերերը ու Մադի-
ամին ծերերը իրենց ձեռքերուն մէջ
է հմայութեան վարձքերով գացին ․
և Բաղաամին եկան, ու Բաղակին
8 խօսքերը ըսին անոր ։ Եւ անիկայ
ըսաւ անոնց ․ ը Աս գիշեր հոս մնա-
ցէք ․ և Տէրը ինչ որ ինծի խօսե-
լու ըլլայ, անոր համեմատ պատաս-
խան պիտի տամ ձեզի ․ ու Մովա-
բին իշխանները Բաղաամին քովը
9 մնացին ։ թ Եւ Աստուած Բաղաա-
մին եկաւ, ու ըսաւ ․ Ո՞վ են ատ
10 քու քովդ եղող մարդիկը ։ Եւ
Բաղաամ ըսաւ Աստուծոյ ․ Մովա-
բին թագաւորը Սեպփորեան Բա-
ղակը առանց ինծի խրկեց՝ ըսելով ․
11 Ահա Եգիպտոսէն ելլող ժողովուր-
դը երկրին երեսը ծածկեց ․ հիմա
եկուր՝ անիծէ զանիկայ ինծի հա-
մար, որ գուցէ կարող ըլլամ անոր
յաղթելու ու զանիկայ վռնտելու ։
12 Եւ Աստուած ըսաւ Բաղաամին ․
Ատոնց հետ չերթաս ․ ժողովուրդը
չանիծես ․ վասն զի ի անիկայ օրհ-
13 նեալ է ։ Եւ Բաղաամ առտուանց
ելաւ, ու ըսաւ Բաղակին իշխան-
ներուն ․ Դուք ձեր երկիրը գացէք ․
ինչու որ Տէրը իս չթողուր ձեզի
14 հետ երթալու ։ Եւ Մովաբին իշ-
խանները ելան, ու Բաղակին եկան՝
և ըսին ․ Բաղաամը մեզի հետ գալ
չուզեց ։
15 Եւ Բաղակ դարձեալ ան առջի-
ներէն աւելի շատ և աւելի պատուա-
16 ւոր իշխաններ խրկեց ։ Եւ անոնք
Բաղաամին եկան՝ ու ըսին անոր ․
Սեպփորին որդին Բաղակը ասանկ
կ'ըսէ ․ Կ'աղաչեմ՝ ինծի գալէն մի
17 հրաժարիր ․ Քանզի քեզի շատ պա-
տիւ պիտի ընեմ, և ինծի ինչ որ
ըսես՝ պիտի ընեմ ․ Լ ուստի կ'ա-
ղաչեմ եկուր՝ անիծէ աս ժողո-
18 վուրդը ինծի համար ։ Եւ Բա-
ղաամ պատասխան տուաւ՝ ու ը-
սաւ Բաղակին ծառաներուն ․ խ Թէ
որ Բաղակ իր տունովը լեցուն ար-
ծաթ ու ոսկի տայ ինծի, ծ իմ
Տէր Աստուծոյս խօսքէն չեմ կրնար
անցնիլ, պզտիկ կամ մեծ բան մը
19 ընելու ։ Եւ հիմա կ'աղաչեմ՝ կ աս
գիշեր դուք ալ հոս կեցէք, որ
գիտնամ թէ Տէրը ուրիշ ինչ պի-
20 տի ըսէ ինծի ։ հ Եւ Աստուած գի-
շերը Բաղաամին եկաւ՝ ու ըսաւ
անոր ․ Թէ որ մարդիկը քեզ կան-
չելու գան, ելի՛ր՝ անոնց հետ գնա ․
ձ Բայց ինչ որ քեզի խօսիմ, միայն
ան ընես ։
21 Եւ Բաղաամ առտուանց ելաւ,
ու իր իշուն համետը դրաւ, և Մո-
վաբի իշխաններուն հետ գնաց ։
22 Ու երբոր կ'երթար, Աստուծոյ
բարկութիւնը բորբոքեցաւ, ղ ու
Տէրոջը հրեշտակը ճամբուն վրայ
կայնեցաւ իբրև անոր թշնամի մը ․
և անիկայ իր իշուն վրայ հեծած
էր, ու անոր երկու ծառաները իր
23 հետն էին ։ Եւ ճ էշը տեսաւ Տէ-
րոջը հրեշտակը, որ ճամբուն վրայ
կայնած էր, ու իր ձեռքը մերկ
սուր մը ունէր, ու էշը ճամբայէն
դարձաւ և արտը մտաւ ․ ու Բա-
ղաամ էշը ծեծեց՝ որ իր ճամբան
24 դարձընէ զանիկայ ։ Եւ Տէրոջը
հրեշտակը այգիներուն նեղ ճամ-
բուն մէջ կայնեցաւ, որ որ մէկ
կողմէն պատ՝ ու մէկա՛լ կողմէն
25 պատ կար ։ Եւ երբոր էշը Տէրոջը
հրեշտակը տեսաւ, պատին քովը
խոթուեցաւ, և Բաղաամին ոտքը
պատին քովը ճնշեց ․ ան ալ նորէն
26 ծեծեց զանիկայ ։ Եւ Տէրոջը հր-
րեշտակը յառաջ գնաց, ու նեղ
տեղ մը կայնեցաւ, ուր աջ կամ
ձախ կողմը խոտորելու ճամբայ
27 չկար ։ Եւ երբոր էշը Տէրոջը
հրեշտակը տեսաւ, Բաղաամին տա-
կը նստաւ ․ ու Բաղաամին բար-
կութիւնը բորբոքեցաւ, և գաւա-
28 զանով ծեծեց էշը ։ Եւ Տէրը մ ի-
շուն բերանը բացաւ, ու անիկայ
Բաղաամին ըսաւ ․ Ի՞նչ րրի քեզի՝
որ այսպէս իրեք անգամ իս ծե-
29 ծեցիր ։ Եւ Բաղաամ ըսաւ ի-
շուն ․ Իս ծաղր ընելուդ համար ․
երանի թէ ձեռքս սուր մը ըլլար,
30 յ որ հիմա քեզ մեռցընէի ։ ն Եւ
էշը ըսաւ Բաղաամին ․ Ես ան
քու էշդ չե՞մ, որուն վրայ կը
հեծնէիր † քու մանկութենէդ" մին-
չև այսօր ․ քեզի ասանկ ընել իմ
սովորութի՞ւնս էր ․ ու անիկայ
31 ըսաւ ․ Ոչ ։ Ան ատենը Տէրը
շ բացաւ Բաղաամին աչքերը ․ ու
երբ տեսաւ որ Տէրոջը հրեշտակը
ճամբուն վրայ կայնած էր, և իր
ձեռքը մերկ սուր մը ունէր, ո իր
երեսին վրայ ինկաւ ու երկրպա-
32 գութիւն ըրաւ ։ Եւ Տէրոջը հրեշ-

Ն․ Ք․ ՂՔ․ 1452

ծ Գ Թագ․ իբ․ 14 ։ Բ Մն․ ժը․ 13 ։

կ Հմր 8 ։

հ Հմր 9 ։

ձ Հմր 35 ։ Գլ․ իգ․ 12, 26 ։ իդ․ 13 ։

ղ Ել․ դ․ 24 ։

ճ Տես Դ Թագ․ զ․ 17 ։ Դան․ ժ․ 7 ։ Գոր․ իբ․ 9 ։ Բ Պետ․ բ․ 16 ։ Յուդ․ 11 ։

մ Բ Պետ․ բ․ 16 ։

յ Առակ․ ժբ 10 ։

ն Բ Պետ․ բ․ 16 ։

† Կամ՝ քուկդ ըլլալէս

շ Տես Ծն․ իա․ 19 ։ Դ Թագ․ զ․ 17 ։ Ղուկ․ իդ․ 16, 31 ։

ո Ել․ լդ․ 8 ։

Ն Ք · ԳՔ · 1452

տակը ըսաւ անոր․ Ինչո՞ւ ասանկ
իրեք անգամ քու էշդ ծեծեցիր․
ահա ես քեզի թշնամութիւն ընե-
լու ելայ․ վասն զի քու ճամբադ
33 ուղիղ չէ իմ առջևս․ Եւ էշը իս
տեսաւ, ու աս իրեք անգամ է որ
իմ առջևէս մէկդի քաշուեցաւ․
թէ որ անիկայ իմ առջևէս մէկդի
չքաշուէր, հիմա ես քեզ անշուշտ
մեռցուցեր էի, ու զանիկայ ողջ
34 թողուցեր էի ։ Եւ Բաղաամ ը-
սաւ Տէրոջը հրեշտակին․ Մեղք
գործեցի՝ չգիտնալով որ ճամբուն
վրայ ինծի դէմ կայներ էիր․ ուս-
տի թէ որ քեզի անհաճոյ կ'երևնայ
35 իմ երթալս, ետ դառնամ ։ Եւ
Տէրոջը հրեշտակը ըսաւ Բաղաա-
մին․ Գնա ատ մարդոցը հետ,
բայց ան խօսքը որ քեզի պիտի
զրուցեմ, ան միայն խօսիս․ և
Բաղաամ գնաց Բաղակին իշխան-
ներուն հետ ։
36 Եւ Բաղակ երբոր լսեց որ Բա-
ղաամը կու գայ, զանիկայ դիմա-
ւորելու ելաւ իր սահմանը եղած
Առնոն գետին քովի Մովաբացւոց
մէկ քաղաքը՝ որ սահմանին ծայրն
37 է ։ Եւ Բաղակ ըսաւ Բաղաամին․
Քեզ կանչելու մարդ չխրկեցի՞․ ին-
չո՞ւ չեկար ինծի․ արդեօք քեզի
պատիւ ընելու կարողութիւն չու-
38 նի՞մ ։ Եւ Բաղաամ ըսաւ Բա-
ղակին․ Ահա ես քեզի եկայ․ բայց
ես բնաւ զօրութիւն ունի՞մ բան
մը ըսելու, Աստուած իմ բերանս
ինչ խօսք որ դնէ, ան պիտի խօ-
39 սիմ ։ Եւ Բաղաամ՝ Բաղակին
հետ գնաց․ ու Կարիաթ Հուսոթը
40 եկան ։ Եւ Բաղակ՝ արջառներ ու
ոչխարներ մորթեց, ու Բաղաամին
և անոր հետ եղող իշխաններուն
խրկեց ։
41 Ու երբոր առտու եղաւ, Բաղակ
առաւ Բաղաամը, և Բահաղին
բարձր տեղուանքը հանեց զանի-
կայ․ ու անկէ ժողովուրդին ծայրը
տեսաւ ։

ԳԼ․ ԻԳ

1, 13, 28 Բաղակին զոհը ։ 7, 18 Բաղաամին
խօսքերը ։

1 Եւ Բաղաամ ըսաւ Բաղակին․
Հոս ինծի եօթը սեղան շինէ,
ու հոս ինծի եօթը զուարակ և եօ-
2 թը խոյ պատրաստէ ։ Եւ Բաղակ՝
Բաղաամին ըսածին պէս ըրաւ․ և
Բաղակ ու Բաղաամ ամէն մէկ սե-
ղանին վրայ մէյմէկ զուարակ ու
3 մէյմէկ խոյ մատուցին ։ Եւ Բա-
ղաամ ըսաւ Բաղակին․ Դուն քու
ողջակէզիդ քովը կայնէ, ու ես
երթամ, գուցէ Տէրը իմ դիմացս
ելլէ․ և ինչ որ ինծի ցուցընէ,
քեզի պիտի ըսեմ․ ու բարձր տեղ
4 մը ելաւ ։ Եւ Աստուած Բաղաա-
մին հանդիպեցաւ․ ու Բաղաամ ը-
սաւ անոր․ Եօթը սեղան պատ-
րաստեցի, ու ամէն մէկ սեղանին
վրայ մէյմէկ զուարակ ու մէյմէկ
5 խոյ մատուցի ։ Եւ Տէրը Բաղաա-
մին բերանը խօսք դրաւ, ու ըսաւ․
Դարձիր Բաղակին, և ասանկ խօ-
6 սէ ։ Եւ դարձաւ անոր․ և ահա
անիկայ իր ողջակէզին քովը կայներ
էր, ինքը ու Մովաբին բոլոր իշ-
7 խանները ։ Եւ իր առակը սկսեց՝
ու ըսաւ․
Մովաբին թագաւորը Բաղակ
զիս Արամէն՝ արևելեան լեռներէն
բերաւ, ըսելով․ Եկուր՝ Յակոբը
անիծէ ինծի, ու եկուր՝ Իսրայէլը
նզովէ ։
8 Աստուծոյ չանիծածը ի՞նչպէս
անիծեմ, կամ Տէրոջը չնզոված
ի՞նչպէս նզովեմ․
9 Վասն զի ապառաժներուն գլխէն
կը տեսնեմ անիկայ, և բլուրներէն
կը նայիմ անոր․ ահա այս ժողո-
վուրդը զատ պիտի բնակի, ու ազ-
գերուն հետ պիտի չսեպուի ։
10 Յակոբին փոշին ո՞վ կրնայ համ-
րել, և Իսրայէլին քառորդը ո՞վ
կրնայ հաշուել․ թող իմ անձս
արդարներուն մահովը մեռնի, ու
իմ վախճանս անոնց վախճանին պէս
ըլլայ ։
11 Եւ Բաղակ ըսաւ Բաղաամին․
Աս ի՞նչ ըրիր ինծի․ ես քեզ բերի
իմ թշնամիներս անիծելու, և ահա
12 դուն բոլորովին օրհնեցիր ։ Եւ ա-
նիկայ պատասխան տուաւ ու ըսաւ․
Ի՞նչ որ Տէրը իմ բերանս դնէ, ան
խօսելու հոգ տանելու չե՞մ ։
13 Եւ Բաղակ նորէն ըսաւ անոր․
Կ'աղաչեմ՝ ինծի հետ ուրիշ տեղ
մը եկուր, որ անոնք տեսնես անկէ․
անոնց միայն մէկ ծայրը տեսնես, և
անոնց ամէնը պիտի չտեսնես․ ու
անկէ անիծէ անոնք ինծի համար ։
14 Եւ տարաւ զանիկայ Սոփիմին ար-
տը՝ Փասգային գլուխը, ու եօ-
թը սեղան շինեց, և ամէն մէկ սե-
ղանին վրայ մէյմէկ զուարակ ու
15 մէյմէկ խոյ մատուց ։ Եւ ըսաւ
Բաղակին․ Դուն հոս քու ողջա-
կէզիդ քովը կայնէ․ ու ես հոն
16 Տէրը դիմաւորեմ ։ Եւ Տէրը Բա-
ղաամին դիմացը ելաւ․ և անոր
բերանը խօսք դրաւ՝ ու ըսաւ․
Բաղակին դարձիր՝ ու ասանկ ըսէ ։
17 Եւ երբոր եկաւ անոր․ ահա ա-
նիկայ իր ողջակէզին քովը կայներ
էր․ Մովաբին իշխաններն ալ անոր
հետն էին․ և Բաղակ ըսաւ անոր․
18 Տէրը ի՞նչ խօսեցաւ ։ Եւ անիկայ
իր առակը սկսեց՝ ու ըսաւ․

Ն Բ Պետ․ Բ 14, 15։ Դ Ա Թագ․ ԺԵ․ 24, 30։ Իզ․ 21։ Բ Թագ․ ԺԲ 13։ Յոբ ԼԴ․ 31, 32։ Է Հմր 20։ Տ Տես Ծն․ ԺԴ․ 17։ Գլ․ Իա․ 13։ Լ Հմր 17։ Գլ․ Իդ․ 11։ Ր Գլ․ Իգ․ 26։ Իդ․ 13։ Գ Թագ․ ԻԲ․ 14։ Բ Մն․ ԺԸ․ 13։ Բ Օր․ ԺԲ․ 2։ Ա Հմր 29։ Բ Հմր 14, 30։ Գ Հմր 15։ Դ Գլ․ Իդ․ 1։

Ն․ Ք․ ԳՔ․ 1452 Կամ՝ առանձին, ի-
նքն բաց։ Ե Հմր 16։ Զ Հմր 16։ Գլ․ ԻԲ․ 35։ Բ Օր․ ԺԸ․ 18։ Երեմ․ Ա․ 9։ Է Հմր 18։ Գլ․ Իդ․ 3, 15, 23։ Յոբ․ ԻԷ․ 1։ ԻԹ․ 1։ Սաղ․ ՀԸ․ 2։ Եզեկ․ ԺԷ․ 2։ Միք․ Բ 4։ Ամբ․ Բ․ 6։ Ը Գլ․ ԻԲ․ 6, 11, 17։ Թ Ես․ ԽԵ․ 12, 13։ Ժ Բ Օր․ ԼԳ 28։ Ի Ել․ ԼԳ․ 16։ Եզր․ Թ․ 2։ Եփե․ Բ․ 14։ Լ Ծն․ ԺԳ․ 16։ ԻԲ 17։ Խ Սաղ․ ՃԺԶ․ 15։ Ծ Գլ․ ԻԲ․ 11, 17։ Իդ․ 10։ Կ Գլ․ ԻԲ․ 38։ † Կամ՝ բլուրին։ Հ Հմր 1, 2։ Ձ Հմր 5։ Գլ․ ԻԲ․ 35։

Ն. Ք. Ծ. 1452

ա Դատ. դ. 20։ ճ ա Թագ. ժե. 29։ Մաղ. գ. 6։ Հռով. ժա. 29։ Յակ. ա. 17։ Տիտ. ա. 2։ ժ Ծն. ժբ. 2։ իբ. 17։ Թու. իբ. 12։ յ Հռով. դ. 7, 8։ ն Ես. ժդ. 21։ իթ. 45, 46։ լդ. 14։ շ Գլ. իդ. 8։ ո բ Օր. լգ. 17։ Յոբ. լթ. 10, 11։ *Կամ՝ փառք չ Սաղ. լա. 19։ խդ. 1։ պ Ծն. խթ. 9։ ջ Ծն. խթ. 27։ ռ Հմր 12։ Գլ. իբ. 38։ գ Թագ. իբ. 14։ ս Հմր 13։ վ Գլ. իա. 20։ տ Հմր 1։ ր Գլ. իգ. 3, 15։

Ննջէ՛ր ո՛վ Բաղակ, ու լսէ. ո՛վ Սեպփորին որդին՝ ինծի մտիկ ըրէ։
19 ճԱստուած մարդ չէ՛ որ սուտ խօսի, ոչ ալ մարդու որդի՝ որ զղջայ. ինքը ըսաւ, ու պիտի չընէ՞, կամ ինքը խօսեցաւ, ու տեղը պիտի չբերէ՞։
20 Ահա հրաման առի օրհնելու. ժ ինքը օրհնեց, ու ես չեմ կրնար ետ դարձնել։
21 յՅակոբին վրայ անօրէնութիւն մը չտեսնեց, ո՛չ ալ Իսրայէլին վրայ անզգամութիւն տեսաւ. նանոր Տէր Աստուածը իր հետն է. և անոր մէջը թագաւորի ցնծութեան ձայն կայ։
22 շՁանոնք Եգիպտոսէն հանողը՝ Աստուած է. ոանիկայ միեղջերուի պէս *ուժ ունի։
23 Քանզի Յակոբին դէմ կախարդութիւն չըլլար. ու Իսրայէլին դէմ գիւթութիւն չքանիր. Յակոբին ու Իսրայէլին վրայով աս ատենիս համեմատ պիտի ըսուի թէ, չԱստուած ինչեր ըրաւ։
24 Ահա [illegible] ժողովուրդը պմատակ առիւծի պէս պիտի ելլէ, ու առիւծի պէս պիտի բարձրանայ. ջ[illegible] պիտի չպառկի՝ մինչև որ որսը չուտէ, ու մեռածներուն արիւնը չխմէ։
25 Եւ Բաղակ ըսաւ Բաղաամին. Ո՛չ անէծք տուր անոնց՝ ոչ ալ
26 օրհնութիւն։ Ու Բաղաամ պատասխան տալով՝ Բաղակին ըսաւ. Միթէ ես քեզի չխօսեցա՞յ՝ ըսելով. ռԻ՛նչ որ Տէրը խօսի՝ ան պիտի ընեմ։
27 Եւ Բաղակ ըսաւ Բաղաամին. սԵկո՛ւր՝ մէկ ուրիշ տեղ մը տանիմ քեզ. գուցէ Աստուած հաճի, որ անկէ անիծես զանոնք ինծի հա-
28 մար։ Ուստի Բաղակ տարաւ Բաղաամը Փոգովրին գագաթը, որ
29 վդէպ 'ի Եսիմոն կը նայի։ Ու Բաղաամ ըսաւ Բաղակին. տՀոս ինծի եօթը սեղա՛ն շինէ, ու հոս ինծի եօթը զուարակ ու եօթը խո՛յ
30 պատրաստէ։ Եւ Բաղակ՝ Բաղաամին ըսածին պէս ըրաւ. ու [illegible] մէկ սեղանին վրայ մէյմէկ զուարակ ու մէյմէկ խոյ մատուց։

## ԳԼ. ԻԴ

1 Բաղաամ առանց հմայքներ փնտռելու, Իսրայէլին երջանկութեանը վրայ կը մարգարէանայ։ 10 Բաղակ սրդողելով՝ կը խրկէ զանիկայ որ երթայ։ 15 Բաղաամ մարգարէութիւն կ'ընէ Յակոբին Աստղին վրայ, ու քանի մը ազգերու կործանմանը վրայ։

1 Երբոր Բաղաամ տեսաւ որ Տէրը կը հաճի Իսրայէլը օրհնել, րմեկալ անգամներուն պէս հմայքներ փնտռելու չգնաց. այլ իր երեսը
2 դէպ 'ի անապատը դարձուց։ Ու Բաղաամ իր աչքերը վերցնելով՝ տեսաւ որ Իսրայէլը իր ցեղերուն կարգովը [illegible] բանակած է. ու բԱստուծոյ Հոգին անոր
3 վրայ եկաւ. գՈւ իր առակը սկսելով՝ ըսաւ.
Բէովրին որդւոյն Բաղաամին խօսքը՝ ու աչքը †բաց մարդուն խօսքը,
4 Աստուծոյ խօսքերը լսող, ու Ամենակարողին տեսիլքը տեսնող, դ[illegible] զետինը ինկող՝ ու աչքերը բաց եղողին խօսքը աս է։
5 Ո՛վ Յակոբ՝ քու վրաններդ, ու ո՛վ Իսրայէլ՝ քու խորաններդ ի՛նչ գեղեցիկ են.
6 Ձորերու պէս տարածուեցան. գետերու քով եղող պարտէզներու պէս, եՏէրոջը տնկած զհալուէի ծառերուն՝ [illegible] ջուրին եզերքը եղող եղևիններուն պէս են։
7 Անոր դոյլերէն ջուր պիտի վազէ. ու անոր սերմը էառատ ջուրերու մէջ պիտի ըլլայ. անոր թագաւորը ըԱգագէն աւելի պիտի բարձրանայ, ու թթագաւորութիւնը աճի։
8 իՁանիկայ Եգիպտոսէն հանողը՝ Աստուած է. միեղջերուի պէս ուժ ունի. լիրեն թշնամի եղող ազգերը պիտի ուտէ. խանոնց ոսկորները պիտի կոտրտէ, ու [illegible] իր նետերովը պիտի զարնէ.
9 ծԱռիւծի պէս նստաւ պառկեցաւ, ու մատակ առիւծի պէս. զանիկայ ո՛վ պիտի արթընցընէ։ կՔեզ օրհնողները՝ օրհնեալ ըլլան, ու քեզ անիծողները՝ անիծեալ։
10 Ան ատենը Բաղակ շատ սրդողեցաւ Բաղաամին, ու հձեռքերը իրարու զարկաւ. և Բաղակ ըսաւ Բաղաամին. ձԵս քեզ կանչեցի որ իմ թշնամիներուս անէծք տաս, և ահա աս իրեք անգամ է որ [illegible]
11 [illegible] օրհնութիւն տուիր։ Ուստի դուն հիմա քու տեղդ փախիր. ղքեզի շատ պատիւ ընեմ՝ ըսի, բայց ահա Տէրը քեզ պատուէ զրկեց։
12 Եւ Բաղաամ ըսաւ Բաղակին. Ես քու խրկած դեսպաններուդ ալ
13 չխօսեցա՞յ ըսելով. ճԲաղակը թէ որ ինծի իր տունովը լեցուն արծաթ ու ոսկի տայ, ես Տէրոջը խօսքէն չեմ կրնար անցնիլ, որ ինքիրմէս աղէկ կամ գէշ՝ բան մը ընեմ. Տէրը ինչ որ ըսէ, ան պիտի խօսիմ։
14 Եւ ահա ես հիմա իմ հայրենիքս կ'երթամ. եկո՛ւր, յքեզի հասկըցընեմ թէ աս ժողովուրդը նետքի օրերը ինչ պիտի ընէ
15 քու ժողովուրդիդ։ ՆԱն ատենը իր առակը սկսելով՝ ըսաւ.

Ն. Ք. Ծ. 1452

ա Գլ. բ. 2։ բ Գլ. ժա. 25։ ա Թագ. ժ. 10։ ժթ. 20, 23։ բ Մն. ժե. 1։ գ Գլ. իդ. 7, 18։ †Կամ՝ գոց դ Տես ա Թագ. ժթ. 24։ Եզեկ. ա. 28։ Դան. ը. 18։ ժ. 15, 16։ բ Կոր. ժբ. 2, 3, 4։ Յայտ. ա. 10, 17։ ե Սաղ. ճգ. 16։ զ Սաղ. ա. 3։ Երեմ. ժէ. 8։ է Երեմ. ծա. 13։ Յայտ. ժէ. 1, 15։ ը ա Թագ. ժե. 9։ թ բ Թագ. ե. 12։ ա Մն. ժդ. 2։ ի Գլ. իգ. 22։ լ Գլ. ժգ. 9։ իգ. 24։ խ Սաղ. բ. 9։ Ես. լը. 13։ Երեմ. ծ. 17։ ծ Սաղ. խե. 5։ Երեմ. ծ. 9։ կ Ծն. խթ. 9։ հ Ծն. ժբ. 3։ իէ. 29։ ձ Եզեկ. իա. 14, 17։ իբ. 13։ ղ Գլ. իգ. 11։ բ Օր. իգ. 4, 5։ Յես. իդ. 9, 10։ Նեեմ. ժգ. 2։ ճ Գլ. իբ. 17, 37։ մ Գլ. իբ. 18։ յ Միք. զ. 5։ Յայտ. բ. 14։ ն Ծն. խթ. 1։ Դան. բ. 28։ ժ. 14։ շ Հմր 3, 4։

Ն. Ք. ԳՖ.
1452

ա Յայտ. ա. 7։
ւ Մատ. բ. 2։ Յայտ. իբ. 16։
գ Ծն. խթ. 10։ Սաղ. ճժ. 2։
ւ բ Թագ. ը. 2։ Երեմ. խը. 45։
* կամ՝ ծայրերը
ա բ Թագ. ը. 14։ Սաղ. կ. 8. 9. 12։
ա Ծն. խթ. 10։
Վել. ժէ. 8։
ա Ել. ժէ. 14։ ա Թագ. ժե. 3, 8։
ը Ծն. ժե. 19։
ծ Ծն. ժ. 4։ Դան. ժա. 30։
ա Ծն. ժ. 21, 25։
ա Տես ԻԼ. լա. 8։

Բէովրի որդւոյն Բաղաամին խօս-
քը՝ ու աչքը բաց մարդուն խօսքը,
16 Աստուծոյ խօսքերը լսող՝ և
Բարձրելոյն գիտութիւնը գիտցող,
ու Ամենակարողին տեսիլքը տես-
նող, և թմրութեամբ դէպ գետինը ին-
կող՝ ու աչքը բաց եղողին խօսքը
աս է։
17 Զանիկայ պիտի տեսնեմ, բայց
հիմա չէ. զանիկայ պիտի զննեմ,
բայց մօտերս չէ՛. Յակոբէն մէկ
աստղ մը պիտի ծագի, ու Իսրայէ-
լէն իշխանութեան գաւազան մը
պիտի ելլէ, և Մովաբի *իշխանները
պիտի զարնէ, ու Սէթին բոլոր որ-
դիները բնաջինջ պիտի ընէ։
18 Նաև Եդովմը պիտի նուաճի.
Սէիրն ալ իր թշնամիներէն պիտի
նուաճի. բայց Իսրայէլը քաջու-
թիւն պիտի ընէ։
19 Եւ Յակոբէն ելլողը պիտի իշխէ,
ու քաղաքին մէջ մնացողը պիտի
կորսնցընէ։
20 Երբոր Ամաղէկին նայեցաւ, ու
իր առակը սկսելով՝ ըսաւ.
Ամաղէկը ազգերուն գլուխն է.
բայց վերջը բոլորովին պիտի կոր-
սուի։
21 Ու Կենեցիին նայեցաւ, և իր ա-
ռակը սկսելով՝ ըսաւ.
Ցեղդ ու քու նստած տեղդ անա-
ռիկ է, ու քու բոյնդ ապառաժի
վրայ դրեր ես.
22 Բայց Կենեցին պիտի աւրուի,
մինչև որ Ասուրը քեզ գերի տանի։
23 Երբոր իր առակը սկսելով՝ ըսաւ.
Ափսոս, երբոր Աստուած աս
բաներս ընէ, ո՞վ ողջ պիտի մնայ։
24 Ու նաւեր Կիտացւոց եզերքներէն
նաւեր պիտի գան, և Ասուրը պիտի
չարչարեն, ու Եբերը չարչարեն.
բայց անոնք ալ բոլորովին պիտի
կորսուին։
25 Երբոր Բաղաամ ելաւ գնաց, ու
իր տեղը դարձաւ. և Բաղակն ալ
իր ճամբան գնաց։

ԳԼ. ԻԵ

1 Իսրայէլը Սատիմի մէջ պոռնկութիւն ու կռա-
պաշտութիւն կ՚ընէ։ 6 Փենէհէս կը մեռցընէ
Զամբրին ու Քազբին։ 10 Աս բանիս հա-
մար Աստուած յաւիտենական քահանայու-
թիւնը անոր կու տայ։ 16 Մադիանացիք
թշնամի համարուելու էին։

1 Եւ Իսրայէլը Սատիմի մէջ բնա-
կեցաւ, ու ժողովուրդը Մովա-
բին աղջիկներուն հետ սկսաւ պոռ-
2 նկութիւն ընել։ Ու անոնք ժո-
ղովուրդը հրաւիրեցին իրենց աս-
տուածներուն զոհերուն. ու ժո-
ղովուրդը զոհերէն ուտելով անոնց
աստուածներուն երկրպագութիւն
3 ըրին։ Եւ Իսրայէլը Բելփեգովրին
յարեցաւ. ուստի Տէրոջը բար-
կութիւնը Իսրայէլի վրայ բորբոքե-
4 ցաւ։ Եւ Տէրը Մովսէսին ըսաւ.
Ժողովուրդին բոլոր իշխանները
առ, ու զանոնք Տէրոջը առջևը
արևին դէմ կախէ՛, որ Տէրոջը
սաստիկ բարկութիւնը Իսրայէլէն
5 դառնայ։ Եւ Մովսէս Իսրայէլի
դատաւորներուն ըսաւ. Մեռցու-
ցէք ամէն մէկերնիդ ձեր մարդիկ-
ները՝ որ Բելփեգովրին յարեցան։
6 Եւ ահա Իսրայէլի որդւոցմէ մէկը
եկաւ, ու իր եղբայրներուն մէկ
Մադիանացի կնիկ մը բերաւ՝ Մով-
սէսին աչքին առջևը, ու Իսրայէլի
որդւոցը բոլոր ժողովքին առջևը,
երբոր անոնք ժողովքի խորա-
7 նին դրանը քովը կու լային։ Եւ
Ահարոն քահանայի որդւոյն Ե-
ղիազարին որդին Փենէհէսը աս
բանը տեսնելով՝ ժողովքին մէջէն ե-
լաւ, ու ձեռքը գեղարդ մը առաւ,
8 Եւ Իսրայէլացի մարդուն ետևէն
սենեակը մտաւ, ու երկուքն ալ՝
այսինքն Իսրայէլացի մարդը և կնիկը
փորէն խոցեց. ու հարուածը Իս-
9 րայէլի որդւոցմէ դադարեցաւ։ Ու
հարուածէն մեռածները քսանու-
չորս հազար հոգի էին։
10 Եւ Տէրը խօսեցաւ Մովսէսին՝ ը-
11 սելով. Ահարոն քահանայի որ-
դւոյն Եղիազարին որդին Փենէհէ-
սը՝ իմ բարկութիւնս Իսրայէլի որ-
դւոցմէ դարձուց. որովհետև անի-
կայ ինծի համար նախանձ ունե-
ցաւ անոնց մէջը. այսպէս՝ ես իմ
նախանձովս Իսրայէլի որդիքը բնա-
12 ջինջ չըրի։ Անոր համար ըսէ որ
Ահա ես անոր կու տամ իմ խաղա-
13 ղութեան ուխտս. Եւ անոր՝ ու
անկէ ետքը անոր սերունդին
յաւիտենական քահանայութեան
ուխտ մը ըլլայ. որովհետև իր Ա-
տուծոյն նախանձը ունեցաւ, ու
Իսրայէլի որդւոցը համար քաւու-
14 թիւն ըրաւ։ Եւ Մադիանացի
կնկանը հետ զարնուող Իսրայէլացի
մարդուն անունը՝ Զամբրի էր՝
Սալուին տղան, որ Շմաւոնեանց
15 մէկ տոհմին իշխանն էր։ Ու զար-
նուող Մադիանացի կնկանը անու-
նը Քազբի էր, որ Մադիամու մէջ՝
ազգատոհմի իշխան եղող Սուրին
աղջիկն էր։
16 Եւ Տէրը խօսեցաւ Մովսէսին՝
17 ըսելով. Մադիանացւոց թշնա-
մութիւն ըրէք, ու անոնք զար-
18 կէ՛ք. Քանզի անոնք իրենց ըրած
նենգութիւններովը ձեզի թշնա-
մութիւն ըրին Փոգովրի գործին
մէջ՝ ու իրենց քրոջը գործին մէջ՝
այսինքն Մադիանացի իշխանին աղ-
ջկանը Քազբիին, որ հարուածին
օրը զարնուեցաւ Փոգովրին համար։

ա Գլ. լգ. 49։ Յես. բ. 1։ Միք. զ. 5։
բ Գլ. լա. 16։ ա Կոր. ժ. 8։
գ Յես. իբ. 17։ Սաղ. ճզ. 28։ Ովս. թ. 10։
դ Ել. լդ. 15, 16։ ա Կոր. ժ. 20։
ե Ել. ի. 5։
զ Սաղ. ճզ. 29։

Ն. Ք. ԳՖ.
1452

է բ Օր. դ. 3։ Յես. իբ. 17։
ը Հմր 11։ բ Օր. ժգ. 17։
թ Ել. ժը. 21, 25։
ժ Ել. լբ. 27։ բ Օր. ժգ. 6, 9, 13, 15։
ի Յովէլ. բ. 17։
լ Ել. զ. 25։
խ Սաղ. ճզ. 30։
ծ Սաղ. ճզ. 30։
կ բ Օր. դ. 3։ ա Կոր. ժ. 8։
հ Սաղ. ճզ. 30։
ձ Տես բ Կոր. ժա. 2։
ղ Ել. ի. 5։ բ Օր. լբ. 16, 21։ գ Թագ. ժզ. 22։ Սաղ. ճր. 58։ Եզեկ. ժզ. 38։ Սոփ. ա. 15։ գ. 8։
ճ Մաղ. բ. 4, 5։ գ. 1։
մ Տես Մն. գ. 4, 5։
յ Ել. խ. 15։
ն Գոր. իբ. 3։ Հռով. ժ. 2։
շ Եբր. բ. 17։
ո Գլ. լա. 8։ Յես. ժգ. 21։
չ Գլ. լա. 2։
պ Գլ. լա. 16։ Յայտ. բ. 14։

Ն. Ք. ԳՔ. 1452

## ԳԼ. ԻԶ

1 Մովաբի դաշտերուն մէջ Իսրայէլացւոց գումարը կ'առնեն ։ 52 Երկիրը ժառանգութեան համար բաժնելու օրէնքը ։ 57 Ղեւտացւոց տոհմերը և անոնց համրանքը ։ 63 Սինայի անապատին մէջ համրուածներէն՝ միայն Քաղէբը ու Յեսուն ողջ կը մնան ։

1 Ու հարուածէն ետքը՝ Տէրը Մով-
սէսին և Ահարոնի որդւոյն Ե-
ղիազար քահանային խօսեցաւ ըսե-
2 լով . "Իսրայէլի որդւոցը բոլոր
ժողովքին գումարը առէ՛ք , անոնց
հարցը տուներուն համեմատ , ᴮքսան
տարեկանէն վեր եղողները՝ այնոնք
Իսրայէլի մէջ բոլոր պատերազմելու
3 *կարող եղողները" համրելով ։ Ուս-
տի Մովսէս ու Եղիազար քահա-
նան՝ ᶜՄովաբի դաշտերուն մէջ՝ Ե-
րիքովի դիմացը Յորդանանու մօտ՝
անոնց հետ խօսեցան՝ ըսելով .
4 Քսան տարեկանէն վեր եղողները
համրեցէ՛ք , ինչպէս որ Տէրը ᵈՄով-
սէսին՝ ու Եգիպտոսի երկրէն ելած
Իսրայէլի որդւոցը հրամայեց ։
5 ᵉՌուբէն՝ Իսրայէլին անդրանի-
կը . Ռուբէնի որդիքը . Ենով-
քէն՝ Ենովքեան տոհմը , Փաղ-
6 ղուսէն՝ Փաղղուսեան տոհմը , Ես-
րոնէն՝ Եսրոնեան տոհմը , Քար-
միէն՝ Քարմեան տոհմը յառաջ
7 եկան ։ Ռուբէնեան տոհմերը ա-
սոնք են . ու անոնց համրուածները՝
քառասունուերեք հազար եօթը հա-
8 րիւր երսուն հոգի էին ։ Եւ Փաղ-
9 ղուսին որդին՝ Եղիաբ էր ։ Ու
Եղիաբին որդիքը՝ Նամուէլ , Դա-
թան ու Աբիրոն էին . աս Դաթա-
նը ու Աբիրոնը ᶠժողովքի խորհըր-
դականներ էին , ասոնք էին՝ որ
Տէրոջը դէմ կեցող Կորխին ժողով-
քին մէջը՝ Մովսէսին ու Ահարոնին
10 դէմ կեցան ։ ᵍԵւ երկիրը իր բե-
րանը բանալով՝ կլլեց զանոնք ու
Կորխն ալ , ան ժողովքին մեռած
ատենը՝ երբոր կրակը ան երկու
հարիւր յիսուն մարդիկները կե-
րաւ . ʰու անոնք նշանի օրինակ
11 եղան ։ Բայց ⁱԿորխին որդիքը չմե-
ռան ։
12 Շմաւոնի որդիքը իրենց տոհ-
մերովը . ʲ†Յամուէլէն՝ Յամուէ-
լեան" տոհմը , Յամինէն՝ Յամի-
նեան տոհմը , ᵏՅաքինէն՝ Յաքի-
13 նեան տոհմը , ˡԶարայէն՝ Զարա-
յեան տոհմը , Սաւուղէն՝ Սաւու-
ղեան տոհմը յառաջ եկան ։
14 Շմաւոնեան տոհմերը ասոնք են ,
քսանուերկու հազար երկու հա-
րիւր հոգի ։
15 Գադի որդիքը իրենց տոհմերովը .
ᵐՍափոնէն՝ Սափոնեան տոհմը ,
Անգիէն՝ Անգեան տոհմը , Սու-
16 նիէն՝ Սունեան տոհմը , ⁿԱզենիէն՝
Ազենեան տոհմը , Էրիէն՝ Էրեան
17 տոհմը , ᵒԱրոդիէն՝ Արոդեան
տոհմը , Արելիէն՝ Արելեան տոհմը
18 յառաջ եկան ։ Գադի որդւոցը
տոհմերը ասոնք են . ու անոնց
համրուածները՝ քառասուն հազար
հինգ հարիւր հոգի էին ։
19 ᵖՅուդայի որդիքը՝ Էր ու Օնան
էին . բայց Էրը ու Օնանը Քանա-
20 նու երկրին մէջ մեռան ։ Եւ ᑫՅու-
դայի որդիքը իրենց տոհմերովը
ասոնք էին . Սելոմէն՝ Սելոմեան
տոհմը , Փարեսէն՝ Փարեսեան
տոհմը , Զարայէն՝ Զարայեան
21 տոհմը յառաջ եկան ։ Ու Փարե-
սին որդիքը ասոնք էին . Եսրոնէն՝
Եսրոնեան տոհմը , Համուլէն՝
Համուլեան տոհմը յառաջ եկան ։
22 Յուդայի տոհմերը ասոնք են . ա-
նոնց համրուածները՝ եօթանա-
սունուվեց հազար հինգ հարիւր
հոգի էին ։
23 ʳԻսաքարի որդիքը իրենց տոհ-
մերովը . Թովղայէն՝ Թովղայեան
տոհմը , Փուայէն՝ Փուայեան տոհ-
24 մը , Յասուբէն՝ Յասուբեան տոհ-
մը , Սամրոնէն՝ Սամրոնեան տոհմը
25 յառաջ եկան ։ Իսաքարի տոհմերը
ասոնք են . անոնց համրուածները՝
վաթսունուչորս հազար երեք հա-
րիւր հոգի էին ։
26 ˢԶաբուղոնի որդիքը՝ իրենց
տոհմերովը . Սարեդէն՝ Սարեդեան
տոհմը , Ելոնէն՝ Ելոնեան տոհմը ,
Յաղելէն՝ Յաղելեան տոհմը յա-
27 ռաջ եկան ։ Զաբուղոնի տոհմերը
ասոնք են . անոնց համրուածները՝
վաթսուն հազար հինգ հարիւր հո-
գի էին ։
28 ᵗՅովսէփի որդիքը իրենց տոհմե-
րովը՝ Մանասէն ու Եփրեմն էին ։
29 Մանասէի որդիքը . ᵘՄաքիրէն՝
Մաքիրեան տոհմը յառաջ եկաւ .
ու Մաքիր ծնաւ Գաղաադը , ու
Գաղաադէն՝ Գաղաադեան տոհմը
30 յառաջ եկաւ ։ Գաղաադին որդիքը
ասոնք են . ᵛԻեզերէն՝ Իեզերեան
տոհմը , Քեղեգէն՝ Քեղեգեան
31 տոհմը , Ու Ասրիելէն՝ Ասրիելեան
տոհմը , ու Սիւքեմէն՝ Սիւքեմեան
32 տոհմը , Ու Սեմիդայէն՝ Սեմիդա-
յեան տոհմը , ու Ոփերէն՝ Ոփե-
33 րեան տոհմը յառաջ եկաւ ։ Ու
Ոփերին որդին ʷՍալպաադը բնաւ
տղաքներ չունեցաւ , միայն աղջիկ-
ներ ունեցաւ . ու Սալպաադին աղ-
ջիկներուն անունները՝ Մաալա ,
Նուա , Էգղա , Մեղքա ու Թերսա
34 էին ։ Մանասէի տոհմերը ասոնք
են . ու անոնց համրուածները յի-
սունուերկու հազար եօթը հարիւր
հոգի էին ։
35 Եփրեմի որդիքը իրենց տոհմե-
րովը ասոնք են . Սուտաղայէն՝ Սու-

ᵃ Ել. Լ. 12 ։ Լր. 25, 26 ։ Գլ. Ա. 2 ։
ᵇ Գլ. Ա. 3 ։
* Եբր. ելլող-ները
ᶜ Հմր 63 ։ Գլ. ԻԲ. 1 ։ ԼԱ. 12 ։ ԼԳ. 48 ։ ԼԵ. 1 ։
ᵈ Գլ. Ա. 1 ։
ᵉ Ծն. ԽԶ. 8 ։ Ել. Զ. 14 ։ Ա Մն. Ե. 1 ։
ᶠ Գլ. ԺԶ. 1, 2 ։
ᵍ Գլ. ԺԶ. 32, 35 ։
ʰ Գլ. ԺԶ. 38 ։ Տես Կոր. Ժ. 6 ։ Բ Պետ. Բ. 6 ։
ⁱ Ել. Զ. 24 ։ Ա Մն. Զ. 22 ։
ʲ Ծն. ԽԶ. 10 ։ Ել. Զ. 15 ։
† Կամ՝ Նամուէլէն՝ Նամուէլեանց
ᵏ Ա Մն. Դ. 24 Կ'ըսուի Յարիբ ։
ˡ Ծն. ԽԶ. 10 Կ'ըսուի Սահառ ։
ᵐ Ծն. ԽԶ. 16 ։
ⁿ Տես Ծն. ԽԶ. 16 ։
ᵒ Ծն. ԽԶ. 16 ։
ᵖ Ծն. ԼԸ. 2 ։ ԽԶ. 12 ։
ᑫ Ա Մն. Բ. 3 ։
ʳ Ծն. ԽԶ. 13 ։ Ա Մն. Է. 1 ։
ˢ Ծն. ԽԶ. 14 ։
ᵗ Ծն. ԽԶ. 20 ։
ᵘ Յես. ԺԷ. 1 ։ Ա Մն. Է. 14, 15 ։
ᵛ Յես. ԺԷ. 2 ։ Դատ. Զ. 11, 24, 34 Կ'ըսուի Աբիեզեր ։
ʷ Գլ. ԻԷ. 1 ։ ԼԶ. 11 ։

Ն․Ք․ԴՔ․ 1452

տաղայեանց տոհմը , Բոքորէն՝ Բո-
քորեանց տոհմը , Թաանէն՝ Թա-
36 անեանց տոհմը յ——ղ Է[—— ։ Ու
Սուտաղային որդիքը ասոնք են ․
*Կամ՝ Էդե-նէն՝ Էդենեանց
*Էրանէն՝ Էրանեանց" տոհմը
37 յ——ղ Է[—— ։ Եփրեմի որդւոցը
տոհմերը ասոնք են ․ անոնց համ-
րուածները երսունուերկու հազար
հինգ հարիւր հոգի էին ։ Յովսէփի
որդիքը իրենց տոհմերովը ասոնք
են ։
• Ծն․ խզ․ 21 ։ ա Մն․ է․ 6 ։
38 • Բենիամինի որդիքը իրենց տոհ-
մերովը ․ Բաղայէն՝ Բաղայեանց
տոհմը , Ասբէլէն՝ Ասբէլեանց տոհ-
մը , Աքիրամէն՝ Աքիրամեանց տոհ-
39 մը , Սուփամէն՝ Սուփամեանց տոհ-
մը , Ոփիմէն՝ Ոփիմեանց տոհմը յ—
40 —ղ Է[—— ։ Ու Բաղային որդիքը՝
Արեդ ու Նէեման էին ․ Արէդէն՝
Արեդեանց տոհմը , Նէեմանէն՝
Նէեմանեանց տոհմը յ——ղ Է[—— ։
41 Բենիամինի որդիքը իրենց տոհմե-
րովը ասոնք են ․ ու անոնց համ-
րուածները՝ քառասունուհինգ հա-
զար վեց հարիւր հոգի էին ։
42 Դանի որդիքը իրենց տոհմերովը
ՙ Ծն․ խզ․ 23 կ'րսուի Հուսիմ ։
ասոնք են ․ ՙՍուհամէն՝ Սուհա-
մեանց տոհմը յ——ղ Է[—— ։ Դանի
տոհմերը՝ իրենց տոհմերովը ասոնք
43 են ։ Սուհամեանց բոլոր տոհմե-
րուն համրուածները՝ վաթսունու-
չորս հազար չորս հարիւր հոգի էին ։
ՙ Ծն․ խզ․ 17 ։ ա Մն․ է․ 30 ։
44 ՙԱսերի որդիքը իրենց տոհմերո-
վը ․ Յեմնայէն՝ Յեմնայեանց տոհ-
մը , Յեսուիէն՝ Յեսուիեանց տոհ-
մը , Բարիայէն՝ Բարիայեանց տոհ-
45 մը ։ Բարիայի որդւոցմէ ․ Գաբե-
րէն՝ Գաբերեանց տոհմը , Մեղքիե-
լէն՝ Մեղքիելեանց տոհմը յ——ղ
46 Է[—— ։ Ու Ասերին աղջկանը ա-
47 նունը՝ Սարա էր ։ Ասերի որդւոցը
տոհմերը ասոնք են ․ անոնց համ-
րուածները՝ յիսունուերեք հազար
չորս հարիւր հոգի էին ։
ՙ Ծն․ խզ․ 24 ։ ա Մն․ է․ 13 ։
48 ՙՆեփթաղիմի որդիքը իրենց տոհ-
մերովը ․ Յասիելէն՝ Յասիելեանց
տոհմը , Գունիէն՝ Գունեանց տոհ-
49 մը , Յասերէն՝ Յասերեանց տոհ-
մը , Սիլլեմէն՝ Սիլլեմեանց տոհմը
50 յ——ղ Է[—— ։ Նեփթաղիմի տոհ-
մերը՝ իրենց տոհմերովը ասոնք են ․
ու անոնց համրուածները՝ քառա-
սունուհինգ հազար չորս հարիւր
հոգի էին ։
— Տես գլ․ ա․ 46 ։
51 —Աս է Իսրայէլի որդւոցը գու-
մարը ․ վեց հարիւր ու մէկ հազար
եօթը հարիւր երսուն ։
52 Եւ Տէրը խօսեցաւ Մովսէսին՝ ը-
• Յես․ ժա․ 23 ։ ժդ․ 1 ։
53 սելով ․ "Ան երկիրը ժառանգու-
թեան համար ասոնց բաժնուի՝ ի-
րենց անուններուն թուոյն համե-
ՙ Գլ․ լգ․ 54 ։
54 մատ ։ ՙՇատուոր եղողին՝ ժառան-
գութիւնը շատ տաս , ու քիչուոր
եղողին՝ ժառանգութիւնը քիչ
տաս ․ ամէն մէկուն իր համրանքին
համեմատ ժառանգութիւն տրուի ։
ՙ Գլ․ լգ․ 54 ։ լդ․ 13 ։ Յես․ ժա․ 23 ։ ժդ․ 2 ։
55 Բայց երկիրը ՙվիճակով բաժնուի ,
ու իրենց նահապետաց ցեղերուն
անուններուն համեմատ ժառան-
56 գեն ։ Շատուորի ու քիչուորի մէջ՝
ժառանգութիւնը վիճակով բաժ-
նուի ։
ՙ Ծն․ խզ․ 11 ։ Ել․ զ․ 16 , 17 , 18 , 19 ։ ա Մն․ զ․ 1 , 16 ։
57 ՙՈւ Ղեւտացւոց համրուածները
իրենց տոհմերովը ասոնք են ․ Գեր-
սոնէն՝ Գերսոնեանց տոհմը , Կա-
հաթէն՝ Կահաթեանց տոհմը , Մե-
րարիէն՝ Մերարեանց տոհմը յ——ղ
58 Է[—— ։ Ղեւտացւոց տոհմերը ասոնք
են ․ Ղոբենեանց տոհմը , Քեբրո-
նեանց տոհմը , Մոողեանց տոհմը ,
Մուսեանց տոհմը , —— Կորխեանց
59 տոհմը ։ Եւ Կահաթ ծնաւ Ամրա-
մը ։ Ու Ամրամին կնկանը անունը
ՙ Ել․ բ․ 1 , 2 ։ զ․ 20 ։
Յոքաբեդ էր , ՙՂեւիին աղջիկը ,
որուն մ—յրը զանիկայ Եգիպտոսի
մէջ ծնաւ Ղեւիին ․ ու անիկայ Ամ-
րամին ծնաւ Ահարոնը ու Մովսէսը՝
ՙ Գլ․ գ․ 2 ։
60 և անոնց քոյրը Մարիամը ։ ՙԵւ
Ահարոնին՝ Նադաբը և Աբիուդը ,
Եղիազարը ու Իթամարը ծնան ։
ՙ Ղև․ ժ․ 1 , 2 ։ Գլ․ գ․ 4 ։ ա Մն․ իդ․ 2 ։
61 Բայց ՙՆադաբ ու Աբիուդ՝ Տէրոջը
առջեւը օտար կրակ մատուցած ա-
62 տեններն մեռան ։ ՙԱրդ՝ ասոնցմէ
ՙ Տես գլ․ գ․ 39 ։
համրուածները՝ —յ—ին— մէկ ամսա-
կանէն վեր եղող բոլոր արուները
քսանուերեք հազար հոգի էին ․
• Գլ․ ա․ 49 ։
°քանզի անոնք Իսրայէլի որդւոցը
ՙ Գլ․ ժը․ 20 , 23 , 24 ։ բ Օր․ ժ․ 9 ։ Յես․ ժդ․ 14 , 33 ։ ժդ․ 3 ։
հետ չհամրուեցան , ՙԻսրայէլի որ-
դւոցը մէջ անոնց ժառանգութիւն
չտրուելուն համար ։
63 ՙՄովաբի դաշտերուն մէջ՝ Երի-
ՙ Հմր 3 ։
քովի դէմ—ը Յորդանանու մօտ՝
Իսրայէլի որդիքը հաշւի անցընող
Մովսէսին ու Եղիազար քահանային
ՙ Գլ․ ա ։ բ Օր․ բ․ 14 , 15 ։
64 համրածները ասոնք են ։ ՙԵւ ա-
սոնց մէջը բնաւ մէկ մարդ մը չկար
Իսրայէլի որդւոցը ——ջն համրուած-
ներէն՝ որոնք որ Մովսէս ու Ահա-
րոն քահանան Սինայի անապատին
65 մէջ համրեցին ։ Քանզի Տէրը ա-
ՙ Գլ․ ժդ․ 28 , 29 ։ ա Կոր․ ժ․ 5 , 6 ։
նոնց համար ըսեր էր որ՝ ՙԱնշուշտ
անապատին մէջ պիտի մեռնին ․
ուստի անոնցմէ մարդ մը չմնաց ․
ՙ Գլ․ ժդ․ 30 ։
բաց 'ի ՙՅեփոնեան Քաղեբէն ու
Նաւեան Յեսուէն ։

## ԳԼ․ ԻԷ

1 Սալպաադին աղջիկները ժառանգութեան ի-
րաւունքի համար կը բողոքեն ։ 6 Ժառան-
գութեան օրէնքը ։ 12 Մովսէս իմանալով
թէ ինքը պիտի մեռնի , կ'աղաչէ Տէրոջը որ
իրեն յաջորդ մը ընտրէ ։ 18 Յեսուն կ'ընտ-
րուի Մովսէսին յաջորդը ըլլալու ։

1 Ու Յովսէփի որդւոյն Մանասէին
տոհմերէն՝ Մանասէի որդւոյն
ՙ Գլ․ իզ․ 33 ։ լզ․ 1 , 11 ։ Յես․ ժէ․ 3 ։
Մաքիրի որդւոյն Գաղաադի որ-
դւոյն Ոփերի որդւոյն ՙՍալպաադին

Ն. Ք. ԶՔ. 1452

բ Գլ. ժդ. 35 ։ իզ. 64, 65 ։
գ Գլ. ժզ. 1, 2 ։
դ Յես. ժէ. 4 ։
ե Ել. ժը. 15, 19 ։
զ Գլ. լզ. 2 ։
է Գլ. լե. 29 ։
ը Գլ. լդ. 47 ։ բ Օր. գ. 27 ։ լբ. 49 ։ լդ. 1 ։
թ Գլ. ի. 24, 28 ։ լա. 2 ։ բ Օր. ժ. 6 ։
ժ Գլ. ի. 12, 24 ։ բ Օր. ա. 37 ։ լբ. 51 ։ Սաղ. ճզ. 32 ։
ի Ել. ժէ. 7 ։
լ Գլ. ժզ. 22 ։ Եբր. ժբ. 9 ։
խ բ Օր. լա. 2 ։ ա Թագ. ը. 20 ։ ժը. 13 ։ բ Մն. ա. 10 ։

աղջիկները մօտեցան . ու աղջիկնե-
րուն անունները ասոնք են . Մաա-
լա , Նուա , Եգլա , Մեղքա ու
2 Թերսա . Ասոնք Մովսէսին և Եղիա-
զար քահանային՝ ու իշխաններուն՝
և բոլոր ժողովքին առջևը կայնե-
ցան ժողովքի խորանին դուռը , ու
3 ըսին . Մեր հայրը բ անապատին
մէջ մեռաւ . ու անիկայ Տէրոջը
դէմ ժողվուածներուն ժողովքին
մէջ՝ գ Կորխի ժողովքին մէջը չէր .
բայց անիկայ իր մեղքովը մեռաւ ,
4 ու տղաքներ չունէր ։ Ինչո՞ւ հա-
մար մեր հօրը անունը իր տոհմին
մէջէն վերնայ՝ տղայ չունենալուն
համար . դ Մեզի կալուածք տուէք
5 մեր հօրը եղբայրցը մէջ ։ Ու Մով-
սէս ե անոնց դատը Տէրոջը առ-
6 ջևը դրաւ ։ Եւ Տէրը խօսեցաւ
7 Մովսէսին՝ ըսելով . Սալպաադին
աղջիկները շիտակ խօսեցան . զ Ան-
պատճառ անոնց ժառանգութեան
կալուածք տաս իրենց հօրը եղ-
բայրցը մէջ , ու անոնց հօրը ժա-
ռանգութիւնը իրենց վրայ դար-
8 ձրնես . Եւ Իսրայէլի որդւոցը խօ-
սիս՝ ու ըսես . Թէ որ մարդ մը
մեռնի , ու տղայ չունենայ , անոր
ժառանգութիւնը իր աղջկանը վրայ
9 դարձրնէք . Եւ թէ որ անիկայ աղ-
ջիկ ալ չունենայ , ան ատենը անոր
ժառանգութիւնը իր եղբայրներուն
10 տաք . Եւ թէ որ եղբայրներ ալ
չունենայ , ան ատենը անոր ժա-
ռանգութիւնը իր հօրեղբայրներուն
11 տաք . Ու թէ որ հօրեղբայրներ ալ
չունենայ , անոր ժառանգութիւնը՝
իր տոհմին մէջ իր ամենէն մօտ ազ-
գականին տաք , ու ան ըլլայ անոր
ժառանգը . և ասիկայ՝ Իսրայէլի որ-
դւոցը է դատաստանի կանոն ըլլայ ,
ինչպէս որ Տէրը Մովսէսին պա-
տուիրեց ։
12 Ետքը Տէրը Մովսէսին ըսաւ .
ը Աս Աբարիմի լեռը ելիր , ու տե՛ս
ան երկիրը , որն որ Իսրայէլի որ-
13 դւոցը պիտի տամ . Եւ ան տես-
նելէդ ետքը , դուն ալ թ քու ժողո-
վուրդիդ պիտի խառնուիս , ինչպէս
որ քու եղբայրդ Ահարոնը խառ-
14 նուեցաւ . Որովհետև ժ դուք իմ
հրամանիս դէմ ապստամբութիւն
ըրիք Սին անապատին մէջ՝ ժողով-
քին հակառակութիւն ըրած ատե-
նը , ու անոնց առջևը զիս չփա-
ռաւորեցիք ան ջուրին քովը ։ (Աս
է Կադէսի ի Մերիպայի Ջուրը՝ Սին
անապատին մէջ ։ )
15 Եւ Մովսէս խօսեցաւ Տէրոջը՝ ու
16 ըսաւ . Տէրը լ բոլոր մարդոց հոգի-
ներուն Աստուածը՝ աս ժողովուր-
17 դիս վրայ մարդ մը կեցրնէ , խ Որ
անիկայ անոնց առջևէն ելլէ ու
մտնէ , ու զանոնք հանէ ու մտցը-
նէ , որպէս զի Տէրոջը ժողովքը
ծ անհովիւ ոչխարներու պէս չըլլայ ։
18 Եւ Տէրը ըսաւ Մովսէսին . Ա՛ռ
քեզի Նաւէին որդին Յեսուն՝ կ ո-
րուն վրայ Հոգի կայ , հ ու անոր
19 վրայ ձեռքդ դի՛ր . Եւ զանիկայ Ե-
ղիազար քահանային ու բոլոր ժո-
ղովքին առջևը կայնեցո՛ւր . և ձ ա-
նոնց աչքին առջևը անոր պատուէ՛ր
20 տուր . Ու ղ քու փառքէդ անոր
վրա՛յ դիր , որպէս զի Իսրայէլի որ-
դւոցը բոլոր ժողովքը՝ ճ անոր հնա-
21 զանդութիւն ընեն ։ մ Եւ անիկայ
Եղիազար քահանային առջևը պի-
տի կայնի , ու Տէրոջը առջևը յ Ու-
րիմին իրաւունքովը *անոր պիտի
հարցրնէ" . ն անոր խօսքովը պիտի
ելլեն , ու անոր խօսքովը մտնեն ,
ինքը՝ և իրեն հետ Իսրայէլի որդիքը
22 ու բոլոր ժողովքը ։ Եւ Մովսէս ա-
նանկ ըրաւ , ինչպէս որ Տէրը անոր
հրամայեր էր . առաւ Յեսուն , ու
զանիկայ Եղիազար քահանային ու
բոլոր ժողովքին առջևը կայնեցուց ։
23 Եւ իր ձեռքերը անոր վրայ դնելով՝
շ անոր պատուէր տուաւ , ինչպէս որ
Տէրը Մովսէսին ձեռքովը խօսեր
էր ։

## ԳԼ. ԻԸ.

1 Ընծաները որոշուած ժամանակին պիտի մա-
տուցուէին ։ 3 Մշտնջենաւոր ողջակէզը ։ 9
Շաբաթ օրերուն , 11 ամսագլուխներուն , 16
զատկին , 26 և երախայրիներուն ժամանակին
մատուցուելու զոհերը ։

1 Եւ Տէրը խօսեցաւ Մովսէսին՝ ը-
2 սելով . Պատուիրէ՛ Իսրայէլի
որդւոցը ու անոնց ըսէ՛ . Իմ անու-
շահոտ պատարագներուս ո ընծա-
յուած հացը՝ որոշուած ատենին
ինծի մատուցանելու զգուշութիւն
3 ընէք ։ Ու անոնց ըսես . չ Ասոնք են
ան պատարագները՝ որ Տէրոջը պի-
տի մատուցանէք . օրը երկու հատ
մէկ տարեկան անարատ գառներ
մշտնջենաւոր ողջակէզի համար .
4 Մէկ գառը՝ առտուանց մատուցա-
նես , ու մէկալ գառը՝ իրիկուան
5 դէմ մատուցանես ։ Եւ պ մէկ ար-
դուին տասներորդ մասը բարակ
ալիւրով՝ ջ հացի ընծայ ըլլայ , ու
շաղուած ըլլայ ռ հինի մը
6 քառորդ ծեծուած եղով ։ Ասիկայ՝
Սինայ լեռանը վրայ † սահմանուած
ս մշտնջենաւոր ողջակէզ է , Տէրոջը
անուշահոտ պատարագ ըլլալու հա-
7 մար ։ Ու անոր թափելու նուէրը
ամէն մէկ գառին համար՝ հինի մը
չորրորդ մասը ըլլայ . օղին սուրբ
տեղին մէջ թափելու նուէր ընես
8 Տէրոջը . Եւ մէկալ գառը՝ իրի-
կուան դէմ մատուցանես . ու ա-
ռտուան հացի ընծային ու անոր թա-

Ն. Ք. ԶՔ. 1452

ծ գ Թագ. իբ. 17 ։ Զաք. ժ. 2 ։ Մատ. թ. 36 ։ Մար. զ. 34 ։
կ Ծն. խա. 38 ։ Դատ. գ. 10 ։ ժա. 29 ։ ա Թագ. ժզ. 13, 18 ։
հ բ Օր. լդ. 9 ։
ձ բ Օր. լա. 7 ։
ղ Տե՛ս Գլ. ժա. 17, 28 ։ ա Թագ. ժ. 6, 9 ։ դ Թագ. բ. 15 ։
ճ Յես. ա. 16, 17 ։
մ Տե՛ս Յես. թ. 14 ։ Դատ. ա. 1 ։ ի. 18, 23, 26 ։ ա Թագ. իգ. 9 ։ լ. 7 ։
յ Ել. իը. 30 ։
* Կամ՝ Եղիազար անոր համար պիտի հարցընէ ։
ն Յես. թ. 14 ։ ա Թագ. իբ. 10, 13, 15 ։
շ բ Օր. գ. 28 ։ լա. 7 ։

ո Ղև. գ. 11 ։ իա. 6, 8 ։ Մաղ. ա. 7, 12 ։
չ Ել. իթ. 38 ։
պ Ել. ժզ. 36 ։ Գլ. ժե. 4 ։
ջ Ղև. բ. 1 ։
ռ Ել. իթ. 40 ։
† Եբր. եղած
ս Ել. իթ. 42 ։ Տե՛ս Ամով. ե. 25 ։

Ն. Ք. Ծ. 1452

փելու նուէրին պէս ընես, Տէրոջը
անուշահոտ պատարագ ըլլալու։
9 Բայց շաբաթ օրը՝ մէկ տարեկան
երկու անարատ գառներ՝ ու եղով
շաղուած երկու տասանորդ բարակ
ալիւր հացի ընծայի համար, ու
անոր թափելու նուէրը պէտք մա-
10 տուցանէք։ Ասիկայ մշտնջենաւոր
ողջակէզէն ու անոր թափելու
նուէրէն 'ի զատ, [ե]ամէն շաբաթ
օրուան ողջակէզը պէտք ըլլայ։

[ե] Եզեկ. խզ. 4։

11 Եւ [զ]ձեր ամսագլուխներուն մէջ
Տէրոջը ողջակէզ մատուցանէք,
երկու զուարակ՝ մէկ խոյ՝ ու եօթը
հատ մէկ տարեկան անարատ գառ-
12 ներ. Եւ ամէն մէկ զուարակին հա-
մար՝ եղով շաղուած [է]իրեք տասա-
նորդ բարակ ալիւր հացի ընծայ, և
մէկ խոյին համար՝ եղով շաղուած
երկու տասանորդ բարակ ալիւր հա-
13 ցի ընծայ, Ու ամէն մէկ գառին
համար՝ եղով շաղուած մէյմէկ
տասանորդ բարակ ալիւր հացի
ընծայ մատուցանէք, Տէրոջը ողջա-
կէզ ու անուշահոտ պատարագ
14 ըլլալու։ Եւ անոնց թափելու
նուէրները՝ ամէն մէկ զուարակին
համար կէս հին, ու մէկ խոյին
համար՝ հինին երրորդ մասը, և
ամէն մէկ գառին համար՝ հինին
չորրորդ մասը գինի պիտի ըլլայ.
ասիկայ՝ տարուան ամիսներուն հա-
մար՝ ամէն ամիս մատուցանելու
15 ողջակէզն է։ Եւ մշտնջենաւոր
ողջակէզէն 'ի զատ՝ մեղքի պատա-
րագի համար՝ [ը]այծերէն նոխազ մը
իր թափելու նուէրովը մէկտեղ
մատուցուի Տէրոջը։

[զ] Թւ. ժ. 10։ Ա Թագ. ի. 5։ Ա Մն. իգ. 31։ Բ Մն. բ. 4։ Եզր. գ. 5։ Նէեմ. ժ. 33։ Եսա. ա. 13, 14։ Եզեկ. խե. 17։ խզ. 6։ Ովս. բ. 11։ Կող. բ. 16։
[է] Թւ. ժե. 4—12։
[ը] Հմր 22։ Թւ. ժե. 24։

16 [թ]Եւ առաջին ամսուն չորեքտա-
սաններորդ օրը՝ զատիկ է Տէրոջը.
17 [ժ]Ու ան ամսուն հնգետասաններորդ
օրը տօն է. եօթը օր բաղարջ
18 ուտուի։ [ժա]Առաջին օրը՝ սուրբ ժո-
ղով պէտք ըլլայ. բնաւ ծառայական
19 գործ մը չընէք. Եւ Տէրոջը պա-
տարագ ու ողջակէզ մատուցանէք,
երկու զուարակ՝ մէկ խոյ՝ ու եօթը
հատ մէկ տարեկան գառներ. [ժբ]ա-
20 սոնք անարատ ըլլան ձեզի. Եւ ա-
նոնց հացի ընծան՝ եղով շաղուած
բարակ ալիւր ըլլայ. ամէն մէկ
զուարակին համար՝ իրեք տասա-
նորդ, ու մէկ խոյին համար՝ երկու
21 տասանորդ մատուցանէք. Եօթը
գառներէն՝ ամէն մէկ գառին հա-
մար՝ մէյմէկ տասանորդ մատուցա-
22 նէք. Եւ ձեզի քաւութիւն ընելու
համար՝ [ժգ]այծերէն մէկ նոխազ մեղ-
23 քի պատարագ մատուցանէք։ Ա-
սոնք՝ մշտնջենաւոր ողջակէզ եղող
առտուան ողջակէզներէն 'ի զատ
24 պիտի մատուցանէք։ Ան եօթը
օրերուն ամէն մէկ օրը՝ ասոնց պէս

[թ] Ել. ժբ. 6, 18։ Ղւ. իգ. 5։ Թւ. թ. 3։ Բ Օր. ժզ. 1։ Եզեկ. խե. 21։
[ժ] Ղւ. իգ. 6։
[ժա] Ել. ժբ. 16։ Ղւ. իգ. 7։
[ժբ] Հմր 31։ Ղւ. իբ. 20։ Թւ. իթ. 8։ Բ Օր. ժե. 21։
[ժգ] Հմր 15։

Տէրոջը անուշահոտ պատարագ ը-
նէք. մշտնջենաւոր ողջակէզէն 'ի
զատ՝ ասիկայ ու ասոր թափելու
25 նուէրը պիտի մատուցուի։ Եւ
[ժդ]եօթներորդ օրը՝ սուրբ ժողով
պիտի ըլլայ ձեզի. բնաւ ծառա-
յական գործ մը պիտի չընէք։
26 Եւ [ժե]երախայրիներուն օրը՝ երբոր
ձեր շաբաթներուն տօնին մէջ Տէրո-
ջը նոր հացի ընծայ կը մատուցա-
նէք, սուրբ ժողով ըլլայ ձեզի.
բնաւ ծառայական գործ մը չընէք.
27 Ու Տէրոջը անուշահոտ ողջակէզի
համար՝ [ժզ]երկու զուարակ, մէկ խոյ
ու մէկ տարեկան եօթը հատ գառ-
28 ներ մատուցանէք. Եւ անոնց հացի
ընծան՝ ամէն մէկ զուարակին հա-
մար իրեք տասանորդ, մէկ խոյին
29 համար երկու տասանորդ, Եօթը
գառներէն՝ ամէն մէկ գառին համար
մէյմէկ տասանորդ եղով շաղուած
30 բարակ ալիւր մատուցանէք. Եւ
ձեզի քաւութիւն ընելու համար՝
այծերէն մէկ նոխազ մատուցանէք։
31 Մշտնջենաւոր ողջակէզէն ու անոր
հացի ընծայէն 'ի զատ, ասոնք ու
իրենց թափելու նուէրներովը մա-
տուցանէք. [ժէ]անարատ ըլլան
ձեզի։

[ժդ] Ել. ժբ. 16։ ժգ. 6։ Ղւ. իգ. 8։
[ժե] Ել. իգ. 16։ լդ. 22։ Ղւ. իգ. 10, 15։ Բ Օր. ժզ. 10։ Գոր. բ. 1։
[ժզ] Տես Ղւ. իգ. 18, 19։
[ժէ] Հմր 19։

## ԳԼ. ԻԹ

1. Փող հնչեցնելու տօնին, 7 քաւութեան օրուան, 13 և տաղաւարահարաց տօնին ութը օրերուն զոհերը։

1 Եւ եօթներորդ ամսուն մէջ՝ ամ-
սուն առաջին օրը՝ սուրբ ժողով
ըլլայ ձեզի. բնաւ ծառայական
գործ մը չընէք. [ա]փող հնչեցնելու
2 օր ըլլայ ձեզի։ Եւ Տէրոջը անուշա-
հոտ ողջակէզի համար՝ մէկ զուա-
րակ, մէկ խոյ, ու եօթը հատ մէկ
տարեկան անարատ գառներ մա-
3 տուցանէք. Եւ անոնց հացի ընծան՝
մէկ զուարակին համար՝ իրեք տա-
սանորդ, ու մէկ խոյին համար՝
4 երկու տասանորդ, Եւ եօթը գառ-
ներէն ամէն մէկ գառին համար մէյ-
մէկ տասանորդ եղով շաղուած բա-
5 րակ ալիւր ըլլայ. Եւ ձեզի քաւու-
թիւն ընելու համար՝ այծերէն մէկ
նոխազ մեղքի պատարագ մատուցա-
6 նէք։ Ասոնք՝ Տէրոջը անուշահոտ
պատարագ մատուցանէք, [բ]ամսա-
մուտի ողջակէզը ու անոր հացի
ընծան, և [գ]մշտնջենաւոր ողջա-
կէզը ու անոր հացի ընծան, և ա-
սոնց թափելու նուէրները [դ]իրենց
կանոնովը մատուցանելէն 'ի զատ։
7 Եւ [ե]աս եօթներորդ ամսուն
տասներորդ օրը՝ սուրբ ժողով ըլլայ
ձեզի. ու [զ]ձեր անձերը պիտի խո-
նարհեցընէք, ու ամենեւին գործ մը
8 չընէք։ Եւ Տէրոջը անուշահոտ
ողջակէզի համար՝ մէկ զուարակ,

[ա] Ղւ. իգ. 24։
[բ] Թւ. իը. 11։
[գ] Թւ. իը. 3։
[դ] Թւ. ժե. 11, 12։
[ե] Ղւ. ժզ. 29։ իգ. 27։
[զ] Սաղ. լե. 13։ Եա. ծը. 5։

Ն․ Ք․ ԴՔ․
1452

Ե Գլ․ Իը․ 19։

մէկ խոյ, եւ եօթը հատ մէկ տա-
րեկան գառներ մատուցանէք․ Ա-
9 նոնք ձեզի անարատ ըլլան․ Եւ ա-
նոնց հացի ընծան՝ ամէն մէկ զուա-
րակին համար իրեք տասանորդ,
մէկ խոյին համար երկու տասա-
10 նորդ, Եօթը գառներէն՝ ամէն մէկ
գառին համար՝ մէյմէկ տասանորդ
եզով շաղուած բարակ ալիւր ըլ-
11 լայ․ Ու այծերէն մէկ նոխազ՝ մեղ-
քի պատարագ մատուցանէք․ բաց
'ի քաւութեան օրը մատուցուած
Ը Ղև․ Ժզ․ 3, 5։
մեղքի պատարագէն, ու մշտնջե-
նաւոր ողջակէզէն և անոր հացի ըն-
ծայէն, ու անոնց թափելու նուէր-
ներէն։

Բ Ղև․ Իգ․ 33, Ա ։ Բ Օր․ Ժզ․ 13։ Եզեկ․ Խե․ 25։

12 Եւ Եօթներորդ ամսուն հնգե-
տասաներորդ օրը՝ սուրբ ժողով ըլ-
լայ ձեզի․ բնաւ ծառայական գործ
մը չընէք․ ու եօթը օր Տէրոջը տօն

Ժ Եզր․ Գ․ 4։

13 պահէք։ Եւ Տէրոջը ողջակէզ եւ
անուշահոտ պատարագի համար՝
տասուիրեք զուարակ, երկու խոյ,
եւ մէկ տարեկան տասնուչորս
գառներ մատուցանէք․ անոնք ան-
14 արատ պիտի ըլլան․ Եւ անոնց
հացի ընծան՝ տասուիրեք զուա-
րակներէն ամէն մէկ զուարակին
համար՝ իրեք տասանորդ, եւ եր-
կու խոյերէն ամէն մէկ խոյին հա-
15 մար՝ երկու տասանորդ, Եւ տասն-
ուչորս գառներէն ամէն մէկ գառին
համար՝ մէյմէկ տասանորդ եզով
16 շաղուած բարակ ալիւր ըլլայ․ Ու
այծերէն մէկ նոխազ՝ մեղքի պա-
տարագ մատուցանէք, բաց 'ի մշտըն-
ջենաւոր ողջակէզէն՝ եւ անոր հացի
ընծայէն և թափելու նուէրէն։
17 Եւ երկրորդ օրը՝ տասուերկու
զուարակ, երկու խոյ, եւ մէկ տա-
րեկան տասնուչորս անարատ գառ-
18 ներ մատուցանէք․ Եւ անոնց հա-
ցի ընծան՝ ու թափելու նուէրները՝
զուարակներուն, խոյերուն ու
գառներուն համար, իրենց թուոյն

Ե Հմր 3, 4, 9, 10։ Գլ․ Ժե․ 12։ Իը․ 7, 14։

համեմատ՝ ըստ օրինի պէտք ըլլան․
19 Ու այծերէն մէկ նոխազ՝ մեղքի
պատարագ մատուցանէք, բաց 'ի
մշտնջենաւոր ողջակէզէն՝ և անոր
հացի ընծայէն ու թափելու նուէր-
ներէն։
20 Եւ երրորդ օրը՝ տասնումէկ
զուարակ, երկու խոյ, եւ մէկ տա-
րեկան տասնուչորս անարատ գառ-
21 ներ մատուցանէք․ Եւ անոնց հացի
ընծան՝ ու թափելու նուէրները՝
զուարակներուն, խոյերուն ու
գառներուն համար, իրենց թուոյն

Ւ Հմր 18։

համեմատ ըստ օրինի պէտք ըլլան․
22 Ու մէկ նոխազ՝ մեղքի պատարագ
մատուցանէք, բաց 'ի մշտնջենաւոր
ողջակէզէն, և անոր հացի ընծայէն
ու թափելու նուէրէն։

23 Եւ չորրորդ օրը՝ տասը զուա-
րակ, երկու խոյ եւ մէկ տարեկան
տասնուչորս անարատ գառներ մա-
24 տուցանէք․ Անոնց հացի ընծան՝
ու թափելու նուէրները՝ զուարակ-
ներուն, խոյերուն ու գառներուն
համար, իրենց թուոյն համեմատ՝
25 ըստ օրինի պէտք ըլլան․ Ու այծերէն
մէկ նոխազ՝ մեղքի պատարագ մա-
տուցանէք, բաց 'ի մշտնջենաւոր
ողջակէզէն, և անոր հացի ընծա-
յէն, ու թափելու նուէրէն։
26 Եւ հինգերորդ օրը՝ ինը զուա-
րակ, երկու խոյ, եւ մէկ տարեկան
տասնուչորս անարատ գառներ մա-
27 տուցանէք․ Եւ անոնց հացի ընծան՝
ու թափելու նուէրները՝ զուարակ-
ներուն, խոյերուն ու գառներուն
համար, իրենց թուոյն համեմատ՝
28 ըստ օրինի պէտք ըլլան․ Ու մէկ նո-
խազ՝ մեղքի պատարագ մատուցա-
նէք, բաց 'ի մշտնջենաւոր ողջակէ-
զէն, և անոր հացի ընծայէն, ու
թափելու նուէրէն։
29 Եւ վեցերորդ օրը՝ ութը զուա-
րակ, երկու խոյ, եւ մէկ տարե-
կան տասնուչորս անարատ գառներ
30 մատուցանէք․ Եւ անոնց հացի ըն-
ծան՝ ու թափելու նուէրները՝
զուարակներուն, խոյերուն ու
գառներուն համար, իրենց թուոյն
համեմատ՝ ըստ օրինի պէտք ըլլան․
31 Ու մէկ նոխազ՝ մեղքի պատարագ
մատուցանէք, բաց 'ի մշտնջենաւոր
ողջակէզէն, և անոր հացի ընծա-
յէն, ու թափելու նուէրներէն։
32 Եւ եօթներորդ օրը՝ եօթը զուա-
րակ, երկու խոյ, եւ մէկ տարե-
կան տասնուչորս անարատ գառներ
33 մատուցանէք․ Եւ անոնց հացի ըն-
ծան՝ ու թափելու նուէրները՝
զուարակներուն, խոյերուն ու գառ-
ներուն համար, իրենց թուոյն հա-
34 մեմատ՝ ըստ օրինի պէտք ըլլան․ Ու
մէկ նոխազ՝ մեղքի պատարագ մա-
տուցանէք, բաց 'ի մշտնջենաւոր
ողջակէզէն, և անոր հացի ընծա-
յէն, ու թափելու նուէրէն։
35 Ութերորդ օրը՝ ձեզի Ատոնախմբ-
բութիւն ըլլայ․ բնաւ ծառայա- Խ Ղև․ Իգ․ 36․
36 կան գործ մը չընէք։ Եւ Տէրոջը՝
ողջակէզ եւ անուշահոտ պատա-
րագի համար՝ մէկ զուարակ, մէկ
խոյ, եւ մէկ տարեկան եօթը անա-
37 րատ գառներ մատուցանէք․ Եւ
անոնց հացի ընծան՝ ու թափելու
նուէրները՝ զուարակին, խոյին ու
գառներուն համար, իրենց թուոյն
համեմատ՝ ըստ օրինի պէտք ըլլան․
38 Ու մէկ նոխազ՝ մեղքի պատարագ
մատուցանէք, բաց 'ի մշտնջենաւոր
ողջակէզէն, և անոր հացի ընծա-
յէն, ու թափելու նուէրէն։

Ն․ Ք․ Գ․ 1452

Ծ Ղև․ ԻԳ․ 2։ ա Մն․ ԻԳ․ 31։ բ Մն․ Լ․ 3։ Եզր․ Գ․ 5։ Նեեմ․ Ժ․ 33։ Եա․ Ա․ 14։ Ղև․ Է․ 11, 16։ ԻԲ․ 21, 23։

39 Ձեր տօներուն մէջ ասոնք պի-
տի մատուցանէք Տէրոջը, ձեր
ուխտերուն, ու ձեր կամաւոր ըն-
ծաներուն ողջակէզներէն, հացի
ընծաներէն, թափելու նուէրներէն
ու խաղաղութեան զոհերէն 'ի
զատ։
40 Եւ Մովսէս՝ Իսրայէլի որդւոցը
պատմեց ան ամէնը՝ որ Տէրը Մով-
սէսին պատուիրեր էր։

## ԳԼ․ Լ

1 Ուխտերը կատարելու պարտաւորութիւնը։ 3 Աղջկան մը, 6 կնկան մը, 9 որբեւայրիի մը կամ արձակուածի մը ուխտերուն վրայով։

ա Գլ․ Ա․ 4, 16։ Է․ 2։ բ Ղև․ ԻԷ․ 2։ բ Օր․ ԻԳ․ 21։ Դատ․ ԺԱ․ 30, 35։ Ժող․ Ե․ 4։ գ Ղև․ Ե․ 4։ Մատ․ ԺԴ․ 9։ Գործ․ ԻԴ․ 14։ դ Սաղ․ ԾԶ․ 20։ ե Յոբ․ ԻԲ․ 27։ Սաղ․ ԻԲ․ 25։ Ծ․ 14։ ԿԶ․ 13, 14։ ՃԺԶ․ 14, 18։ Նաւ․ Ա․ 15։

1 Եւ Մովսէս Իսրայէլի որդւոցը
ցեղերու իշխաններուն խօսե-
ցաւ՝ ըսելով․ Տէրոջը պատուիրած
2 հրամանը աս է․ Եթէ որ մէկ մարդ
մը Տէրոջը ուխտ ընէ, կամ երդում
ընելով իր անձը կապելու
ըլլայ, թող իր խօսքը պարապ չհանէ․
բոլոր իր բերնէն ելածին պէս ը-
նէ։
3 Եւ թէ որ մէկ կնիկ մը Տէրոջը
ուխտ ընէ, ու իր մանկութեան ա-
տենը՝ իր հօրը տանը մէջ զինք կա-
4 պելու ըլլայ, Եւ անոր հայրը՝ անոր
ուխտը ու անձին վրայ կապած կա-
պը լսէ, և անոր հայրը բան մը չըսէ
անոր, ան ատենը անոր բոլոր ուխ-
տերը պիտի հաստատուին, ու ան-
ձին վրայ կապած բոլոր կապերն ալ
5 պիտի հաստատուին։ Բայց թէ որ
անոր հայրը՝ իր լսած օրը զանիկայ
արգիլէ, ան ատենը անոր բոլոր
ուխտերը, ու անձին վրայ կապած
կապերը անվաւեր պիտի ըլլան․ և
Տէրը անոր թողութիւն պիտի
տայ․ քանզի անոր հայրը զանիկայ
արգիլեց։
6 Եւ թէ որ կարգուելէն ետքը
ուխտ ընէ, կամ իր շրթունքներէն
7 իր անձը կապող խօսք մը ելլէ, Ու
անոր էրիկը լսէ, և լսած օրը անոր
բան մը չըսէ, ան ատենը անոր
ուխտերը պիտի հաստատուին, ու
իր անձին վրայ կապած կապերն ալ
8 պիտի հաստատուին։ Բայց թէ որ
անոր էրիկը՝ իր լսած օրը զանի-
կայ արգիլէ, ան ատենը անոր վրայ
եղած ուխտը, ու շրթունքներէն
ելած խօսքը՝ որով իր անձը կապեր
էր, անվաւեր կ'ըլլան․ և Տէրը ա-
նոր թողութիւն պիտի տայ։
9 Բայց որբեւայրիի կամ արձակուա-
ծի մը ուխտը՝ ու իր անձին վրայ
կապած ինչ և իցէ կապը՝ իր վրայ
10 հաստատ պիտի մնայ։ Եւ թէ որ
անիկայ՝ իր էրկանը տանը մէջ ուխտ
ըրած էր, կամ երդումով իր անձին
11 վրայ կապ կապեր էր, Ու անոր է-
րիկը լսելով՝ բան մը ըսած չէր ա-
նոր, ու զանիկայ արգիլած չէր, ան
ատենը անոր բոլոր ուխտերը պիտի
հաստատուին, ու իր անձին վրայ
կապած կապերը հաստատ պիտի
12 մնան։ Բայց թէ որ անոր էրիկը՝
իր լսած օրը զանոնք խափանեց, ան
ատենը ուխտ ընելու ու իր անձը
կապելու համար՝ անոր բերնէն ե-
լած բոլոր խօսքերը անվաւեր պիտի
ըլլան․ քանզի անոր էրիկը խափա-
նեց զանոնք․ և Տէրը անոր թո-
13 ղութիւն պիտի տայ։ Կնոջ մը
ամէն ուխտը՝ ու անձը խոնարհե-
ցընելու համար ըրած կապող եր-
դումը՝ անոր էրիկը կրնայ հաստա-
տել, ու անոր էրիկը կրնայ խափա-
14 նել։ Եւ թէ որ անոր էրիկը օրէ
օր անոր բան մը չըսէ, ան ատենը
անոր ամէն ուխտերը՝ ու վրան ե-
ղած ամէն կապերը կը հաստատէ․
իր լսած օրը անոր բան մը չըսելուն
համար՝ զանոնք հաստատած կ'ըլ-
15 լայ։ Բայց թէ որ լսած օրէն ետ-
քը՝ մէկ կերպով մը խափանէ զա-
նոնք, ան ատենը ինքը պիտի կրէ
անոր անօրէնութիւնը։
16 Էրկան մը ու անոր կնկանը մէջ,
ու հօր մը ու մանկութեան ատենը
իր հօրը տունը բնակող աղջկանը
մէջ պահուելու կանոնները ասոնք
են, որոնք Տէրը Մովսէսին պա-
տուիրեց։

## ԳԼ․ ԼԱ

1 Մադիանացիք պատերազմի մէջ կը յաղթուին, ու Բաղաամն ալ կը մեռցուի։ 13 Մովսէս զօրաց իշխաններուն կը սրդողի Մադիանացւոց կնիկները ողջ պահելնուն համար։ 19 Զինուորներուն, գերիներուն և աւարին մաքրուելուն կերպը։ 25 Աւարը բաժնելուն կերպը։ 48 Տէրոջը նուիրուած կամաւոր ընծաները։

1 Եւ Տէրը խօսեցաւ Մովսէսին՝ ը-
2 սելով․ Մադիանացիներէն՝
Իսրայէլի որդւոց վրէժը առնես․
Ու ետքը քու ժողովուրդիդ խառ-
3 նուիս։ Եւ Մովսէս ժողովուրդին
խօսեցաւ՝ ու ըսաւ․ Ձեզմէ մար-
դիկներ պատրաստուին պատերազ-
մի համար, ու Մադիամու վրայ
երթան, որ Մադիամէն Տէրոջը
4 վրէժը առնեն։ Իսրայէլի բոլոր
ցեղերուն ամէն մէկէն հազարական
5 մարդ պատերազմի խրկէք։ Եւ
Իսրայէլի հազարաւորներէն՝ ամէն
մէկ ցեղէն հազարական մարդ ըն-
տրուեցաւ․ այսինքն՝ տասնուերկու
հազար հոգի պատերազմի համար
6 պատրաստուած։ Եւ Մովսէս պա-
տերազմի խրկեց զանոնք․ ամէն մէկ
ցեղէն հազարական մարդ․ ու ա-
նոնց հետ Եղիազար քահանային
որդին Փենեհէսը պատերազմի խրկեց,
որուն ձեռքն էին սուրբ անօթնե-
րը, ու ազդարարութեան փողե-

Ն․ Ք․ Գ․ 1452

զ Ծն․ Գ․ 16։

ա Գլ․ ԻԵ․ 17։ բ Գլ․ ԻԵ․ 13։ գ Գլ․ Ժ․ 9։

Ն · Ք · ՂՔ ·
1452

դ Տես Դատ. զ. 1, 2, 33 ։
ե Բ Օր. ի. 13 ։ Դատ. իա. 11 ։ ա Թագ. իե. 9 ։ գ Թագ. ժա. 15, 16 ։
զ Յես. ժգ. 21 ։
է Յես. ժգ. 22 ։
ը Բ Օր. ի. 14 ։
թ Տես բ Օր. ի. 13 ։ ա Թագ. ժե. 3 ։
ժ Գլ. իդ. 14 ։ բ Պետ. բ. 15 ։ Յայտ. բ. 14 ։
* Եբր. խօսքովը
ի Գլ. իե. 2 ։
լ Գլ. իե. 9 ։
խ Դատ. իա. 11 ։
ծ Գլ. ե. 2 ։
կ Գլ. ժթ. 11, ...

7 րը ։ Եւ Մադիանացւոց դէմ պա-
տերազմեցան, ինչպէս որ Տէրը
Մովսէսին հրամայեր էր . ու անոնց
բոլոր [դ]էրիկ մարդիկները [ե]մեռցու-
8 ցին . Եւ անոնց սպաննուածներուն
հետ Մադիամու թագաւորներն ալ՝
Եւին, Ռոկոմը, Սուրը, Ուրը և
Ռոբէն՝ Մադիամու հինգ թա-
գաւորները սպաննեցին, ու [զ]Բէով-
րի որդին Բաղաամը սրով մեռցու-
9 ցին ։ Եւ Իսրայէլի որդիքը՝ Մա-
դիանացւոց կնիկները ու տղաք-
ները գերի առին, ու անոնց բոլոր
անասունները, և բոլոր հօտերը, ու
բոլոր ստացուածքը թալլեցին ։
10 Եւ անոնց բնակած բոլոր քաղաք-
ները ու բոլոր գեղերը կրակով այ-
11 րեցին ։ Եւ [ը]բոլոր աւարը ու բո-
լոր կողոպուտը առին՝ մարդէ
12 մինչև անասուն ։ Եւ գերիները
ու կողոպուտը և աւարը Մովսէ-
սին՝ Եղիազար քահանային՝ ու
Իսրայէլի որդւոցը ժողովքին՝ բա-
նակը բերին, որ Երիքովի դիմացը՝
Յորդանանու մօտ Մովաբի դաշ-
տերուն մէջն էր ։
13 Եւ Մովսէս ու Եղիազար քահա-
նան՝ և ժողովքին բոլոր իշխանները
բանակէն դուրս ելան զանոնք դի-
14 մաւորելու ։ Եւ Մովսէս՝ պատե-
րազմէն դարձող զօրաց իշխաննե-
րուն, հազարապետներուն ու հա-
15 րիւրապետներուն սրդողեցաւ . Եւ
Մովսէս անոնց ըսաւ . [թ]Արդեօք
բոլոր կնիկները ո՞ղջ թողուցիք ։
16 Ահա [ժ]Բաղաամին *խրատովը [ի]ա-
տոնք պատճառ եղան, որ Իսրայէլի
որդիքը Տէրոջը դէմ մեղանչեցին
Փոգովրի գործին մէջ, և Տէրոջը
ժողովքին վրայ [լ]ան հարուածը ե-
17 կաւ ։ Ուստի հիմա [խ]տղաքներէն՝
ամէն արու մեռցուցէք, ու բոլոր
կնիկները՝ որ էրիկ մարդ գիտցած
են արուի հետ պառկելով՝ մեռցու-
18 ցէք ։ Եւ կնիկներէն՝ ան բոլոր
մանկահասակ աղջիկները՝ որ էրիկ
մարդ գիտցած չեն արուի հետ
պառկելով՝ ձեզի ո՞ղջ թողուցէք ։
19 [ծ]Եւ դուք եօթը օր բանակին դուր-
սը մնացէք . ո՛վ որ մարդ մեռցու-
ցեր է, ու ո՛վ որ [կ]մեռածի դպ-
չեր է, երրորդ օրը՝ ու եօթներորդ
օրը թող մաքրուի՝ թէ դուք
20 և թէ ձեր գերիները ։ Եւ ա-
մէն հանդերձը՝ ու ամէն մորթէ
շինուած ամանը՝ և այծի մազէ շի-
նուած ամէն բանը՝ ու ամէն փայ-
տեղէն ամանը մաքրեցէք ։
21 Եւ Եղիազար քահանան՝ պատե-
րազմի գացող զօրքերուն ըսաւ .
Ասիկայ է ան օրէնքին կանոնը, որ
22 Տէրը Մովսէսին հրամայեց ։ Միայն
ոսկին, արծաթը, պղինձը, եր-
23 կաթը, անագը ու կապարը, Ամէն
կրակը մտնելու բանը՝ կրակէ ան-
ցընէք, ու մաքուր պիտի ըլլայ .
բայց [հ]մաքրութեան ջրով մաքրուի .
սակայն կրակը չմտնելու բանը՝ ջու-
24 րէ անցընէք ։ [ձ]Ու եօթներորդ օ-
րը՝ ձեր հանդերձները լուաք՝ և մա-
քուր ըլլաք, ու ետքը բանակին
մէջ մտնէք ։
25 Եւ Տէրը խօսեցաւ Մովսէսին՝
26 ըսելով . Դուն՝ Եղիազար քահա-
նային ու ժողովքին նահապետու-
թեանց իշխաններուն հետ՝ առ-
նուած կողոպուտին գումարը առ,
27 մարդէ մինչև անասուն . Եւ [ղ]ան
կողոպուտը՝ պատերազմի գացող
պատերազմողներուն ու բոլոր ժո-
ղովքին հաւասարապէս բաժնես ։
28 Եւ պատերազմի գացող պատերազ-
մողներէն Տէրոջը հասը առնես .
[ճ]հինգ հարիւրէն մէկը՝ թէ մար-
դիկներէն, թէ արջառներէն, թէ
29 էշերէն և թէ ոչխարներէն ։ Ա-
հաւասիկ անոնց կէս բաժինէն պիտի
առնես, ու Եղիազար քահանային
30 տաս՝ իբրև Տէրոջը ընծայ ։ Եւ
Իսրայէլի որդւոցը կէս բաժինէն՝
[մ]յիսունէն մէկը առնես, թէ մար-
դիկներէն, թէ արջառներէն, թէ
էշերէն, թէ ոչխարներէն, ու թէ
ամէն անասուններէն . ու անոնք
[յ]Տէրոջը խորանին պահպանութիւ-
31 նը ընող Ղևտացիներուն տաս ։ Եւ
Մովսէս ու Եղիազար քահանան՝
Տէրոջը Մովսէսին հրամայածին
32 պէս ըրին ։ Եւ կողոպուտը՝ այս-
ինքն պատերազմող զօրքին առած
աւարին †գումարը այս էր . վեց հա-
րիւր եօթանասունըհինգ հազար
33 ոչխար, Եօթանասունըերկու հա-
34 զար արջառ, Ու վաթսունըմէկ
35 հազար էշ . Եւ մարդիկներէն՝ էրիկ
մարդու անկողին չգիտցող կնիկնե-
րուն ամէնը՝ երեսունըերկու հազար
հոգի էին ։
36 Եւ պատերազմի գացողներուն ին-
կած կէս բաժինը այս էր . ոչխար-
ներուն թիւը՝ երեք հարիւր երեսու-
նըեօթը հազար հինգ հարիւր էր .
37 Ու ոչխարներէն՝ Տէրոջը հասը՝ վեց
հարիւր եօթանասունըհինգ ե-
38 ղաւ . Եւ արջառները երեսունըվեց
հազար ըլլալով՝ անոնցմէ Տէրոջը
հասը՝ եօթանասունըերկու արջառ
39 եղաւ . Ու էշերը՝ երեսուն հազար
հինգ հարիւր ըլլալով՝ անոնցմէ Տէ-
րոջը հասը՝ վաթսունըմէկ էշ ե-
40 ղաւ . Եւ մարդիկները՝ տասնըվեց
հազար հոգի ըլլալով, անոնցմէ Տէ-
րոջը հասը՝ երեսունըերկու հոգի ե-
ղաւ ։
41 Եւ Մովսէս Տէրոջը նուի-
րուած հասը Եղիազար քահանային

Ն · Ք · ՂՔ ·
1452

հ Գլ. ժթ. 9, 17 ։
ձ Ղև. ժա. 25 ։
ղ Յես. իբ. 8 ։ ա Թագ. լ. 4 ։
ճ Տես հմր 30, 47 ։ Գլ. ժը. 26 ։
մ Տես հմր 42—47 ։
յ Գլ. գ. 7, 8, 25, 31, 36 ։ ժը. 3, 4 ։
† Կամ՝ Մնացորդը, կամ՝ բազմութիւնը

Ն․ Ք․ ԴՔ․
1452

ն Տծս․ ԳԼ․ ԺԸ․ Տ, 19։
ւ Հմր 80։
* Կամ՝ մա֊նեակներ։
ո Ել․ Լ․ 12, 16։
ն բ Օր․ Ի․ 14։
պ Ել․ Լ․ 16։

տուաւ, ինչպէս որ Տէրը Մովսէ֊
սին հրամայեր էր ։
42 Եւ Իսրայէլի որդւոցը կէս բաժի֊
նէն ալ՝ որն որ Մովսէս պատերազ֊
մողներէն զատեր էր՝ Տէրոջը [illegible]
43 [illegible] ։ Եւ ժողովքին կէս բաժի֊
նը՝ իրեք հարիւր երսունուեօթը
44 հազար հինգ հարիւր ոչխար, Եր֊
45 սունուվեց հազար արջառ, Երսուն
46 հազար հինգ հարիւր էշ, Ու տաս֊
47 նուվեց հազար հոգի էր ։ Եւ Մով֊
սէս՝ Իսրայէլի որդւոցը կէս բաժի֊
նէն՝ թէ մարդէն, թէ անասունէն՝
յիսունէն մէկը առնելով, Տէրոջը
խորանին պահպանութիւնը ընող
Ղեւտացիներուն տուաւ, ինչպէս որ
Տէրը Մովսէսին հրամայեր էր ։
48 Եւ զօրքին հազարաւորներուն
վերակացուները՝ այսինքն հազարա֊
պետները ու հարիւրապետները
49 Մովսէսին մօտեցան․ Ու Մովսէսին
ըսին․ Քու ծառաներդ՝ մեր ձեռ֊
քին տակը եղող պատերազմողնե֊
րուն գումարը առինք, ու մեզմէ
50 մարդ մը պակաս չէ ։ Ուստի ամէն
մէկերնիս ինչ որ գտանք՝ Տէրո֊
ջը ընծայ բերինք, ոսկիէ զարդեր,
շղթաներ, ապարանջաններ, մատ֊
նիներ, օղեր ու լանջազեղ *կա֊
մարներ, որ Տէրոջը առջևը մեր
հոգիներուն քաւութիւն ընենք ։
51 Եւ Մովսէս ու Եղիազար քահանան
անոնցմէ ոսկին առին․ ամէնն ալ
52 բանուած բաներ էին ։ Եւ հազա֊
րապետներէն ու հարիւրապետնե֊
րէն Տէրոջը մատուցուած ընծային
բոլոր ոսկին՝ տասնուվեց հազար
եօթը հարիւր յիսուն սիկղ էր ։
53 Պատերազմողներուն ամէն մէկը՝
իրեն համար կողոպուտ առեր էր ։
54 Եւ Մովսէս ու Եղիազար քահանան՝
հազարապետներէն ու հարիւրա֊
պետներէն ոսկին առին, և ժողով֊
քի խորանը բերին, որ Տէրոջը
առջևը Իսրայէլի որդւոցը յիշատակ
ըլլայ ։

## ԳԼ․ ԼԲ

1 Ռուբէնի և Գադի որդիքը՝ Յորդանանու անդիի կողմը իրենց ժառանգութիւնը ըլլալ կ'ուզեն ։ 6 Մովսէս զանոնք կը յանդիմանէ, 16 սակայն աս պայմանով հաւանութիւն կու տայ՝ որ իրենց եղբայրներուն օգնեն պատերազմի մէջ ։ 33 Մովսէս ան երկիրը կու տայ անոնց, 39 որոնք պատերազմելով՝ անոր կը տիրեն ։

ա Գլ․ ԻԱ․ 32 ։ Յես․ ԺԳ․ 25 ։ Բ Թագ․ ԻԴ․ 5։

1 Եւ Ռուբէնի որդիքը ու Գադի որ֊
դիքը խիստ շատ անասուններ
ունէին․ ուստի Յազէրի երկիրը ու
Գաղաադի երկիրը տեսնելով՝ որ
աՀա ան տեղը անասուն պահելու
2 յարմար տեղ մըն է, Գադի որդիքը
ու Ռուբէնի որդիքը գացին, ու
Մովսէսին, Եղիազար քահանային,
և ժողովքի իշխաններուն հետ խօ֊
3 սելով՝ ըսին․ Ատարովթը, Դեբո֊
նը, Յազէրը, Նեմրան, Եսեբո֊
նը, Եղէաղէն, Սեբաման, Նա֊
4 բաւը ու Բէանը, Այսինքն՝ Տէ֊
րոջը Իսրայէլի ժողովքին առջևը
զարկած երկիրը՝ անասուն պահելու
յարմար երկիր մըն է, ու քու ծա֊
5 ռաներդ անասուններ ունին․ Եւ
ըսին․ Թէ որ մենք քու առջևդ
շնորհք գտանք, աս երկիրը քու
ծառաներուդ կալուածքի համար
տրուի․ մեզ Յորդանանէն մի՛ ան֊
ցըներ ։

Ն․ Ք․ ԴՔ․
1452

բ Հմր 36։
գ Հմր 38։
դ Հմր 38։
ե Գլ․ ԻԱ․ 24, 34։
զ Գլ․ ԺԳ․ 3, 26։
է բ Օր․ Ա․ 22։
ը Գլ․ ԺԳ․ 24, 31 ։ Բ Օր․ Ա․ 24, 28։
թ Գլ․ ԺԴ․ 11, 21 ։ Բ Օր․ Ա․ 34։
ժ Գլ․ ԺԴ․ 28, 29 ։ Բ Օր․ Ա․ 35։
ի Գլ․ ԺԴ․ 24, 30։
լ Գլ․ ԺԴ․ 24 ։ Բ Օր․ Ա․ 36 ։ Յես․ ԺԴ․ Տ, 9։
խ Գլ․ ԺԴ․ 33, 34, 35։
ծ Գլ․ ԻԶ․ 64, 65։
կ Բ Օր․ Ա․ 34։
հ Բ Օր․ Լ․ 17 ։ Յես․ ԻԲ․ 16, 18։ Բ Մն․ Է․ 19 ։ ԺԵ․ 2։
յ Յես․ Դ․ 12, 13։

6 Եւ Մովսէս Գադի որդւոցը՝ ու
Ռուբէնի որդւոցը ըսաւ․ Ձեր եղ֊
բայրները պատերազմի երթան, ու
7 դուք աս տեղս նստի՞ք ։ Եւ ինչո՞ւ
համար Իսրայէլի որդւոցը սիրտը կը
թուլցընէք, որ չանցնին ան եր֊
կիրը՝ որն որ Տէրը անոնց տուած
8 է ։ Ձեր հայրերն ալ ասանկ ըրին,
Երբոր զանոնք Կադէս բառնեայէն
խրկեցի երկիրը լրտեսելու համար ։
9 Քանզի զանոնք մինչև Եսքողի ձորը
ելան, ու երկիրը տեսան, և Իսրա֊
յէլի որդւոցը սիրտը թուլցուցին,
որ չմտնեն ան երկիրը՝ որն որ Տէրը
10 անոնց տուեր էր ։ Եւ նոյն օրը
Տէրոջը բարկութիւնը բորբոքե֊
ցաւ, ու երդում ընելով՝ ըսաւ ․
11 Եգիպտոսէն ելած մարդիկները՝
քսան տարեկանէն վեր եղողները՝
բոլոր սրտով ինծի չհնազանդելնուն
համար, բնաւ պիտի չտեսնեն ան
երկիրը, որուն համար Աբրահամին,
Իսահակին ու Յակոբին երդում
12 ըրի տալու․ Բաց 'ի Կենեզեան Յե֊
փոնէի որդին Քաղեբէն, ու Նաւէի
որդին Յեսուէն, որոնք կատարե֊
13 լապէս Տէրոջը հնազանդ եղան ։ Եւ
Տէրոջը բարկութիւնը Իսրայէլի
վրայ բորբոքեցաւ, ու զանոնք
քառասուն տարի անապատին մէջ
պտըտցուց․ մինչև որ Տէրոջը
առջևը չարութիւն ընող ազգը
14 բոլորովին սպառեցաւ ։ Եւ աՀա
դո՛ւք ձեր հայրերուն տեղը ելաք՝
մեղաւոր մարդոց զաւակներու դէմ,
որ Տէրոջը սաստիկ բարկութիւնը
Իսրայէլին վրայ նորէն աւելցընէք ։
15 Վասն զի թէ որ դուք անկէ խոտո֊
րիք, ան ալ նորէն աս ժողովուրդը
անապատին մէջ պիտի ձգէ․ ու
դուք աս բոլոր ժողովուրդին կո֊
րըստեանը պատճառ պիտի ըլլաք ։
16 Եւ անոնք մօտեցան անոր՝ ու ը֊
սին․ Մենք աս տեղս մեր անասուն֊
ներուն համար փարախներ, ու մեր
ընտանեացը համար քաղաքներ շի֊
17 նենք․ Բայց մենք զէնքերնիս առ֊
նենք, ու շուտով Իսրայէլի որդւո֊
ցը առջևէն երթանք, մինչև որ
զանոնք իրենց տեղերը տանինք․ և
մեր ընտանիքը պարսպաւոր քա֊

Ն. Ք. ԶՖ.
1452

Հ Յես. ԻԲ. 4 ;

ղաքներու մէջ բնակին . երկրիս
18 բնակչացը պատճառաւը . Ո–
որ Իսրայէլի որդւոց ամէն
իր ժառանգութիւնը չժա–
ռանգէ , մենք մեր տուները չդառ–
19 նանք ; Իսկ մենք Յորդանանու
անդիի կողմը անոնց հետ ժառան–
գութիւն պիտի չառնենք . Ճ ինչու
որ մեր ժառանգութիւնը՝ Յորդա–
նանու ասդիի կողմը դէպ 'ի արեւելք
ինկած է ;
20 Եւ Մ Մովսէս ըսաւ անոնց . Թէ
որ աս բանը ընէք , ու Տէրոջը առ–
ջեւը պատերազմի համար վրանիդ
21 զէնք առնէք , Եւ Տէրոջը առջեւը՝
դուք ամէնքդ ալ զէնքերով Յոր–
դանանէն անցնիք , մինչեւ որ անի–
կայ իր թշնամիները իր առջեւէն
22 վռընտէ , Եւ Յ ան երկիրը Տէրոջը
առջեւը նուաճի , անկէ ետեւ Ն երբոր
ետ դառնաք , Տէրոջը առջեւը՝ ու
Իսրայէլին առջեւը անմեղ պիտի ըլ–
լաք . և Շ աս երկիրը Տէրոջը առջեւը
23 ձեզի կալուածք պիտի ըլլայ ; Բայց
թէ որ այսպէս չընէք , ահա Տէրոջը
դէմ մեղք գործեցիք , ու գիտցէ՛ք
որ Ո ձեր մեղքը ձեզ պիտի գտնէ ;
24 Չ Ձեր ընտանեացը համար քաղաք–
ներ , ու ձեր հօտերուն համար փա–
րախներ շինեցէք , ու ձեր բերնէն
ելածը ըրէ՛ք ;
25 Եւ Գադի որդիքը՝ ու Ռուբէնի
որդիքը խօսեցան Մովսէսին՝ ըսե–
լով . Ծառաներդ՝ մեր տիրոջը
պատուիրածին պէս պիտի ընենք ;
26 Պ Մեր զաւակները , մեր կնիկները ,
մեր հօտերը ու մեր բոլոր անասուն–
ները՝ հոս Գաղաադի քաղաքներուն
27 մէջ մնան . Ջ Բայց ծառաներդ՝ մեր
տիրոջը ըսածին պէս , ամէնքս ալ
գունդ գունդ պատրաստուինք , ու
Տէրոջը առջեւէն անցնինք պատե–
րազմի համար ;
28 Ռ Ան ատենը Մովսէս՝ Եղիազար
քահանային , ու Նաւէի որդւոյն
Յեսուին , և Իսրայէլի որդւոցը ցե–
ղերուն նահապետութեանց իշխան–
ներուն աս պատուէրը տուաւ՝ ա–
29 նոնց վրայով . Եւ Մովսէս ըսաւ
անոնց . Թէ որ Գադի որդիքը՝ ու
Ռուբէնի որդիքը՝ Տէրոջը առջեւը
ամէնքն ալ պատերազմի համար
պատրաստուած՝ ձեզի հետ Յոր–
դանանէն անցնին , ու ան երկիրը
ձեր առջեւը նուաճի , ան ատենը
Գաղաադի երկիրը անոնց կալուածք
30 տաք . Բայց թէ որ պատրաս–
տուած ձեզի հետ չանցնին , անոնց
կալուածքը ձեզի հետ Քանանու
31 երկրին մէջ ըլլայ ; Իսկ Գադի որ–
դիքը և Ռուբէնի որդիքը պատաս–
խան տուին՝ ու ըսին . Տէրը քու
ծառաներուդ ինչպէս որ պատուի–

Ճ Հմր 33 ; Յես. ԺԲ. 1 ; ԺԳ. 8 ;
Մ Բ Օր. Գ. 18 ; Յես. Ա. 14 ; Դ. 12, 13 ;
Յ Բ Օր. Գ. 20 ; Յես. ԺԱ. 23 ; ԺԲ. 1 ;
Ն Յես. ԻԲ. 4 ;
Շ Բ Օր. Գ. 12, 15, 16, 18 ; Յես. Ա. 15 ; ԺԳ. 8, 32 ; ԻԲ. 4, 9 ;
Ո Ծն. Դ. 7 ; Խդ. 16 ; Ես. ԾԹ. 12 ;
Չ Հմր 16, 34 ;
Պ Յես. Ա. 14 ;
Ջ Յես. Դ. 12 ;
Ռ Յես. Ա. 13 ;

32 րեց , անանկ պիտի ընենք ; Մենք
զէնքերնիս առած՝ Տէրոջը առջեւէն
Քանանու երկիրը պիտի անցնինք .
բայց մեր ժառանգութեան կա–
լուածքը Յորդանանու ասդիի կող–
33 մը ըլլայ ; Ուստի Ս Մովսէս անոնց՝
այսինքն Գադի որդւոցը , ու Ռու–
բէնի որդւոցը , և Յովսէփեան Մա–
նասէին կէս ցեղին տուաւ Ամոր–
հացւոց Վ Սեհոն թագաւորին թա–
գաւորութիւնը , ու Բասանի Ովգ
թագաւորին թագաւորութիւնը ,
երկիրը իր քաղաքներովը՝ այն երկ–
րին քաղաքներուն բոլորտիքը ե–
ղած սահմաններովը ;
34 Եւ Գադի որդիքը Տ պարսպաւոր
քաղաքներ շինեցին , այսինքն Ր Դիե–
բոնը , Ատարովթը ու Ց Արոէրը ,
35 Եւ Ատրօթ սովփանը , Յազերը , ու
36 Յողբէհան , Եւ Ւ Բեթնամրան ու
Բեթարանը , և հօտերու փարախ–
ներ ալ շինեցին ;
37 Ռուբէնի որդիքն ալ Փ Եսեբոնը ,
Եղէաղէն ու Կարիաթեմը շինեցին ;
38 Ու Ք Նաբաւը և Օ Բէէլմոնը , Ֆ որ ա–
սոնց անունները փոխեցին . ու Սէ–
բաման . ու իրենց շինած քաղաք–
ներուն* իրենց անունները դրին ;
39 Եւ Ա Մանասեան Մաքիրին որդի–
քը Գաղաադ գացին , ու առին
զանիկայ . և անոր մէջը եղողը
40 Ամորհացիները վռընտեցին ; Եւ
Մովսէս՝ Բ Գաղաադը տուաւ Մա–
նասեան Մաքիրին , որ հոն բնակե–
41 ցաւ ; Ու Գ Մանասեան Յայիրը
գնաց անոնց գիւղաքաղաքները ա–
ռաւ , ու զանոնք † Հաւօթ յայիր՝
42 անուանեց ; Եւ Նոբահը գնաց ,
ու Կանաթը ու անոր գեղերը ա–
ռաւ . և զանիկայ իր անունովը՝
Նոբահ կոչեց ;

## ԳԼ. ԼԳ

1 Իսրայէլացւոց քառասուներկու իջեւաններուն անունները ; 50 Աստուած կը պատուիրէ բընաջինջ ընել բոլոր Քանանացիները ;

1 Մովսէսին ու Ահարոնին ձեռքովը՝
Եգիպտոսի երկրէն իրենց զօր–
քերովը ելլող Իսրայէլի որդւոցը
2 իջեւանները ասոնք են ; Եւ Մովսէս՝
Տէրոջը հրամանովը անոնց իջեւան–
ներուն համեմատ՝ անոնց գնացք–
ները գրեց . ու անոնց գնացքնե–
րուն համեմատ՝ անոնց իջեւանները
3 ասոնք են ; Դ Առաջին ամսուն մէջ՝
այսինքն առաջին ամսուն տասն ու հինգերորդ
օրը՝ Ե Ռամեսէսէն չուեցին .
զատկին հետեւեալ օրը Իսրայէլի
որդիքը՝ Զ բարձր ձեռքով ելան բոլոր
Եգիպտացւոց աչքերուն առջեւը .
4 Ու Եգիպտացիք իրենց մէջէն զարնուած անդրանիկները
կը թաղէին , Է քանզի Տէրը անոնց
բոլոր անդրանիկները զարկեց . և

Ն. Ք. ԶՖ.
1452

Ս Բ Օր. Գ. 12-17 ; ԻԹ. 8 ; Յես. ԺԲ. 6 ; ԺԳ. 8 ; ԻԲ. 4 ;
Վ Գլ. ԻԱ. 24, 33, 35 ;
Տ Հմր 24 ;
Ր Գլ. ԼԳ. 45, 46 ;
Ց Բ Օր. Բ. 36 ;
Ւ Հմր 3 ;
Փ Գլ. ԻԱ. 27 ;
Ք Ես. ԽԶ. 1 ;
Օ Գլ. ԻԲ. 41 ;
Ֆ Տես Հմր 3 ; Եզ. ԻԴ. 13 ; Յես. ԻԴ. 7 ;
* Կամ՝ փոխել անուններ
Ա Ծն. Ծ. 23 ;
Բ Բ Օր. Գ. 12, 13, 15 ; Յես. ԺԳ. 31 ; ԺԷ. 1 ;
1491
Գ Բ Օր. Գ. 14 ; Յես. ԺԳ. 30 ; Ա Մն. Բ. 21, 22, 23 ;
† Այսինքն՝ Յայիրի գիւղաքաղաքները . Դատ. Ժ. 4 ; Գ Թագ. Դ. 13 ;
Դ Ել. ԺԲ. 2 ; ԺԳ. 4 ;
Ե Ել. ԺԲ. 37 ;
Զ Ել. ԺԴ. 8 ;
Է Ել. ԺԲ. 29 ;

Ն․ Ք․ ԴՔ․
1452

Ի Ել․ ԺԲ․ 12 ։ ԺԲ․ 11 ։ Ես․ ԺԹ․ 1 ։ Յայտ․ ԺԲ․ 8 ։
Հ Ել․ ԺԲ․ 37 ։
Ի Ել․ ԺԳ․ 20 ։
Ձ Ել․ ԺԴ․ 2, 9 ։
Ղ Ել․ ԺԴ․ 22 ։ ԺԵ․ 22, 23 ։
Ճ Ել․ ԺԵ․ 27 ։
Բ Ել․ ԺԶ․ 1 ։
Լ Ել․ ԺԷ․ 1 ։ ԺԹ․ 2 ։
1490
Ի Ել․ ԺԶ․ 1 ։ ԺԹ․ 1, 2 ։
Ծ Թւ․ ԺԱ․ 34 ։
Կ Թւ․ ԺԱ․ 35 ։
Հ Թւ․ ԺԳ․ 1 ։

ԽՏէրը անոնց աստուածներուն վրայ
դատաստան ըրաւ ։
5 ՂԵւ Իսրայէլի որդիքը՝ Ռամսե-
սէն չուելով՝ Սոկքովթ իջեւան ը-
րին ։
6 Ու ԽՍոկքովթէն չուելով՝ անա-
պատին ծայրը եղած Ոթոմը իջեւան
ըրին ։
7 Եւ ՁՈթոմէն չուելով՝ դէպ 'ի
Փիահիրօթ դարձան , որ Բէեղսե-
փոնին դիմացն է , ու Մագդողին
առջեւը իջեւան ըրին ։
8 Եւ Փիահիրօթին առջեւէն չուե-
լով , ու Ղծովուն մէջէն անցնելով՝
անապատը կոխեցին , եւ Ոթոմի անա-
պատին մէջ իրեք օրուան ճամբայ
քալելով՝ Մեռայ իջեւան ըրին ։
9 Եւ Մեռայէն չուելով՝ ՃԵղիմը
եկան . ու Եղիմի մէջ տասուերկու
ջուրի աղբիւր՝ ու եօթանասուն
արմաւենի կային . ու հոն իջեւան
ըրին ։
10 Եւ Եղիմէն չուելով՝ Կարմիր ծո-
վուն քովը իջեւան ըրին ։
11 Եւ Կարմիր ծովէն չուելով՝ ԲՍին
անապատը իջեւան ըրին ։
12 Եւ Սին անապատէն չուելով՝
Դափկա իջեւան ըրին ։
13 Եւ Դափկայէն չուելով՝ Եղուսը
իջեւան ըրին ։
14 Ու Եղուսէն չուելով՝ ԼՌափի-
դիմը իջեւան ըրին . ու հոն ժո-
ղովուրդին համար խմելու ջուր
չկար ։
15 Եւ Ռափիդիմէն չուելով՝ ԻՍի-
նայի անապատը իջեւան ըրին ։
16 Ու Սինայի անապատէն չուելով՝
ԾԿիբրոթ հաթթավան իջեւան
ըրին ։
17 Եւ Կիբրոթ հաթթավայէն չուե-
լով՝ ԿԱսերովթը իջեւան ըրին ։
18 Ու Ասերովթէն չուելով՝ ՀՌա-
թաման իջեւան ըրին ։
19 Եւ Ռաթամայէն չուելով՝ Ռե-
մոն փարէսը իջեւան ըրին ։
20 Ու Ռեմոն փարեսէն չուելով՝
Լեբնան իջեւան ըրին ։
21 Եւ Լեբնայէն չուելով՝ Ռեսսան
իջեւան ըրին ։
22 Ու Ռեսսայէն չուելով՝ Կեհելա-
թան իջեւան ըրին ։
23 Եւ Կեհելաթայէն չուելով՝ Սափար
լեռը իջեւան ըրին ։
24 Ու Սափար լեռնէն չուելով՝ Քա-
րադան իջեւան ըրին ։
25 Եւ Քարադայէն չուելով՝ Մակե-
ղօթը իջեւան ըրին ։
26 Ու Մակեղօթէն չուելով՝ Թաա-
թը իջեւան ըրին ։
27 Եւ Թաաթէն չուելով՝ Թարան
իջեւան ըրին ։
28 Ու Թարայէն չուելով՝ Մատեկան
իջեւան ըրին ։
29 Եւ Մատեկայէն չուելով՝ Հասա-
մոնան իջեւան ըրին ։
30 Ու Հասմոնայէն չուելով՝ Մօսե-
րօթը իջեւան ըրին ։
31 Եւ Մօսերօթէն չուելով՝ Բանէ
յականը իջեւան ըրին ։
32 Ու ՅԲանէ յականէն չուելով՝
ՂԳադգադ *լեռը իջեւան ըրին ։
33 Եւ Գադգադ լեռնէն չուելով՝
Ետեբաթան իջեւան ըրին ։
34 Ու Ետեբաթայէն չուելով՝ Եբ-
րոնան իջեւան ըրին ։
35 Ու Եբրոնայէն չուելով՝ ՃԳասիոն
գաբերը իջեւան ըրին ։
36 Եւ Գասիոն գաբերէն չուելով՝
ՄՍին անապատը՝ այսինքն Կադէսը
իջեւան ըրին ։
37 Եւ ՅԿադէսէն չուելով՝ Հովր լե-
ռը իջեւան ըրին , որ Եդովմի երկ-
38 րին ծայրն է ։ Ու ՆԱհարոն քա-
հանան Տէրոջը հրամանովը Հովր
լեռը ելաւ , եւ հոն մեռաւ , Իսրա-
յէլի որդւոցը Եգիպտոսի երկրէն
ելլելուն քառասներորդ տարին՝
հինգերորդ ամսուն առաջին օրը ։
39 Եւ Ահարոն՝ Հովր լեռանը վրայ
մեռած ատենը՝ հարիւր քսան-
ուիրեք տարեկան էր ։
40 Եւ Քանանու երկրին հարաւային
կողմը բնակող ՇԱրադի †Քանա-
նացի թագաւորը՝ Իսրայէլի որ-
դւոցը գալը լսեց ։
41 Եւ ՈՀովր լեռնէն չուելով՝ Սել-
մոնան իջեւան ըրին ։
42 Ու Սելմոնայէն չուելով՝ Փունոնը
իջեւան ըրին ։
43 Ու Փունոնէն չուելով՝ ՉՈբովթը
իջեւան ըրին ։
44 Եւ ՊՈբովթէն չուելով՝ Մովաբի
սահմանին մէջ եղող ՋԻյէ աբարի-
մը իջեւան ըրին ։
45 Եւ Իյէ աբարիմէն չուելով՝ ՌԴե-
բոն գադը իջեւան ըրին ։
46 Ու Դեբոն գադէն չուելով՝ ՍԳել-
մոն դէբլաթէմը իջեւան ըրին ։
47 Ու Գելմոն դէբլաթեմէն չուելով՝
Նաբաւին առջեւը՝ ՎԱբարիմի լեռ-
ները իջեւան ըրին ։
48 Եւ Աբարիմի լեռներէն չուելով՝
Երիքովի դիմացը՝ Յորդանանու մօտ
ՏՄովաբի դաշտերուն մէջ իջեւան
49 ըրին ։ Ուստի անոնք Յորդանա-
նու մօտ Մովաբի դաշտերուն մէջ
իջեւան ըրին , Բեթեսիմօթէն մին-
չեւ ՐԱբէլսատիմը ։
50 Եւ Տէրը Մովաբի դաշտերուն
մէջ՝ Երիքովի դիմացը Յորդանանու
մօտ՝ խօսեցաւ Մովսէսին՝ ըսելով .
51 Իսրայէլի որդւոցը խօսէ , ու անոնց
ըսէ . ՑԵրբոր Յորդանանէն Քա-
52 նանացւոց երկիրը անցնիք , ՒԱն
երկրին բոլոր բնակիչները ձեր առ-
ջեւէն վռնտեք , ու անոնց բոլոր

Ն․ Ք․ ԴՔ․
1452

Յ Ծնն․ ԼԶ․ 27 ։ Բ Օր․ Ժ․ 6 ։ Ա Մն․ Ա․ 42 ։
Ղ Բ Օր․ Ժ․ 7 ։
* Կամ՝ այրը
1453
Ճ Բ Օր․ Բ․ 8 ։ Գ Թագ․ Թ․ 26 ։ ԻԲ․ 49 ։
Մ Թւ․ Ի․ 1 ։ ԻԷ․ 14 ։
Յ Թւ․ Ի․ 22, 23 ։ ԻԱ․ 4 ։
Ն Թւ․ Ի․ 25, 28 ։ Բ Օր․ Ժ․ 6 ։ ԼԲ․ 50 ։
Շ Թւ․ ԻԱ․ 1 ։
† Կամ՝ Քանանիս
Ո Թւ․ ԻԱ․ 4 ։
Չ Թւ․ ԻԱ․ 10 ։
Պ Թւ․ ԻԱ․ 11 ։
Ջ Թւ․ ԻԱ․ 11 ։
Ռ Թւ․ ԼԲ․ 34 ։
Ս Երեմ․ ԽԲ․ 22 ։
Վ Թւ․ ԻԱ․ 20 ։ Բ Օր․ ԼԲ․ 49 ։
Տ Թւ․ ԻԲ․ 1 ։
Ր Թւ․ ԻԵ․ 1 ։ Յես․ Բ․ 1 ։
Ց Բ Օր․ Է․ 1, 2 ։ Թ․ 1 ։ Յես․ Գ․ 17 ։
Ւ Ել․ ԻԳ․ 24, 33 ։ ԼԴ․ 13 ։ Բ Օր․ Է․ 2, 5 ։ ԺԲ․ 3 ։ Յես․ ԺԱ․ 12 ։ Դատ․ Բ․ 2 ։

Ն․ Ք․ ՌՖ․
1452

պատկերաւոր կոթողները կործա-
նէք, և անոնց բոլոր թափծու
կուռքերը կործանէք, ու անոնց
53 բոլոր բարձր տեղերը փլցնէք ։ Եւ
ան երկիրը ձեր իշխանութեանը
տակը անցընելով՝ անոր մէջը բնա-
կիք․ քանզի ան երկիրը ձեզի տուի
54 որ ժառանգէք ։ Եւ ‡ ան երկիրը
վիճակով ժառանգէք ձեր տոհմե-
րուն համեմատ․ շատուոր եղողին
ժառանգութիւնը շատ պիտի տաք,
ու քիչուոր եղողին ժառանգութիւ-
նը քիչ պիտի տաք․ մէկ տեղի մը
վիճակը որուն որ ելլէ, անոր ըլլայ
[illegible]․ ձեր հարցը ցեղերուն
55 համեմատ ժառանգէք ։ Բայց թէ
որ ան երկրին բնակիչները ձեր առ-
ջևէն չվռընտէք, ան ատենը անոնց-
մէ ողջ թողուցածնիդ՝ + ձեր աչքե-
րուն փուշեր, ու ձեր կողերուն
տատասկներ պիտի ըլլան․ ու ձեր
բնակած երկրին մէջ՝ ձեզի թշնա-
56 մութիւն պիտի ընեն ։ Եւ պիտի
ըլլայ որ՝ ինչ որ անոնց ընելու մը-
տածեր էի, նոյնը պիտի ընեմ ձեզի ։

## ԳԼ․ ԼԴ

1 Երկրին սահմանները ։ 16 Երկիրը բաժնելու համար որոշուած մարդոց անունները ։

1 Եւ Տէրը խօսեցաւ Մովսէսին՝ ը-
2 սելով․ Իսրայէլի որդւոցը պա-
տուիրես, ու անոնց ըսես․ Երբոր
դուք ‑ Քանանու երկիրը մտնէք,
ձեզի ժառանգութիւն իյնալու եր-
կիրը աս պիտի ըլլայ, Քանանու
3 երկիրը իր սահմաններովը․ Եւ
Բ ձեր հարաւային սահմանը՝ Սին
անապատէն մինչև Եդովմ ըլլայ, և
ձեր հարաւային սահմանը արևել-
քէն՝ Գ Աղի ծովուն ծայրէն սկսի․
4 Ու ձեր հարաւային սահմանը Դ Ակ-
րաբիմ զառ՛ի վերը պտըտելով՝
մինչև Սին հասնի, ու անկէ ելլելով՝
Ե Կադէս Բառնեային հարաւային
կողմը երթայ, ու Զ Ասար Ադդա-
5 րէն ելլելով՝ Ասեմոնը հասնի․ Եւ
Ասեմոնէն Է մինչև Եգիպտոսի հե-
ղեղատը պտըտելով՝ ծովուն մէջ
լմըննայ սահմանը ։
6 Իսկ ձեր արևմտեան սահմանը մեծ
ծովը ըլլայ․ ձեզի արևմտեան սահ-
ման ան ըլլայ ։
7 Եւ ձեր հիւսիսային կողմի սահ-
մանը աս ըլլայ․ մեծ ծովէն մինչև
8 Ը Հովր լեռը նշանակէք․ Հովր լեռ-
նէն Թ մինչև Եմաթը նշանակէք, ու
անկէ սահմանը մինչև Ժ Սեդադը
9 հասնի․ Եւ ան սահմանը մինչև
Զեփրոնը ելլէ, ու ԺԱ Ասար Ենանի
մէջ լմըննայ․ ձեր հիւսիսային սահ-
մանը աս ըլլայ ։
10 Եւ ձեր արևելեան սահմանին հա-
մար, Ասար Ենանէն մինչև Սեփամ
11 նշանակէք․ Ու աս սահմանը՝ Ա-
յինին արևելեան կողմէն՝ Սեփամէն
ԺԲ Ռեբղա իջնէ․ ու աս սահմանը
արևելից կողմէն իջնելով՝ մինչև
ԺԳ Քեններեթի ծովուն եզերքը հաս-
12 նի․ Եւ աս սահմանը Յորդանան
իջնէ, ու ԺԴ Աղի ծովուն մէջ վեր-
ջանայ ։ Աս երկիրը՝ իր շրջակայ
սահմաններովը ձեզի ըլլայ ։
13 Եւ Մովսէս Իսրայէլի որդւոցը
պատուիրեց, ու ըսաւ․ ԺԵ Ասիկայ է
ան երկիրը՝ որ դուք վիճակով պիտի
ժառանգէք, ինչպէս որ Տէրը հրա-
մայեց ինն ու կէս ցեղի տալու անի-
14 կայ․ ԺԶ Քանզի Ռուբէնի որդւոցը
ցեղը՝ իրենց հարցը տուներուն հա-
մեմատ, ու Գադի որդւոցը ցեղը՝
իրենց հարցը տուներուն համեմատ,
և Մանասէին կէս ցեղը՝ իրենց ժա-
15 ռանգութիւնը առին ։ Աս երկուք
ու կէս ցեղը իրենց ժառանգութիւ-
նը առին Երիքովին դէմացը՝ Յոր-
դանանու ասդիի կողմը՝ դէպ 'ի
արևելք ։
16 Եւ Տէրը խօսեցաւ Մովսէսին՝ ը-
17 սելով․ Ասոնք են ան մարդոցը
անունները՝ որոնք երկիրը ժառան-
գութեան համար ձեզի պիտի բաժ-
նեն․ ԺԷ Եղիազար քահանան՝ ու
18 Նաւէին որդին Յեսուն․ Եւ ամէն
ցեղէն ալ մէյմէկ ԺԸ իշխան առնէք,
ան երկիրը ժառանգութեան բաժ-
19 նելու ։ Եւ ան մարդոցը անուննե-
րը ասոնք են․ Յուդայի ցեղէն՝
20 Յեփոնէին որդին Քաղէբը, Շմաւո-
նի որդւոցը ցեղէն՝ Ամիուդին որ-
21 դին Սամուէլը, Բենիամինի ցեղէն՝
22 Քասղօնին որդին Եղդադը, Դանի
որդւոցը ցեղէն իշխան՝ Եգղիին որ-
23 դին Բոկկին, Յովսէփի որդւոցմէ՝
Մանասէի որդւոցը ցեղէն իշխան՝
24 Եփոդին որդին Անիէլը, Ու Եփրեմի
որդւոցը ցեղէն իշխան՝ Սափաթա-
25 նին որդին Կամուէլը, Եւ Զաբու-
ղոնի որդւոցը ցեղէն իշխան՝ Փառ-
26 նակի որդին Եղիսափանը, Եւ Ի-
սաքարի որդւոցը ցեղէն իշխան՝
27 Ազանին որդին Փաղտիէլը, Ու Ա-
սերի որդւոցը ցեղէն իշխան՝ Սելօ-
28 միին որդին Աքիուդը, Ու Նեփ-
թաղիմի որդւոցը ցեղէն իշխան՝
29 Ամիուդին որդին Փադայէլը ։ Ա-
սոնք են ան մարդիկները՝ որոնց Տէրը
հրամայեց, որ Քանանու երկրին
մէջ Իսրայէլի որդւոցը ժառանգու-
թիւն բաժնեն ։

## ԳԼ․ ԼԵ

1 Ղևտացւոց տրուելու քաղաքները՝ իրենց արուարձաններովը ։ 6 Անոնցմէ վեցը ապաստանի քաղաքներ պիտի ըլլային ։ 9 Մարդասպանութեան վրայով օրէնքներ ։

‡ Գլ․ իզ․ 53, 54, 55 ։
+ Յես․ իգ․ 13 ։ Դատ․ բ․ 3 ։ Սաղ․ ճզ․ 34, 36 ։ Տես Եւ․ իգ․ 33 ։ Եզեկ․ իը․ 24 ։
‑ Ծն․ ժէ․ 8 ։ Բ Օր․ ա․ 7 ։ Սաղ․ ծր․ 55 ։ ճե․ 11 ։ Եզեկ․ խէ․ 14 ։
Բ Յես․ ժե․ 1 ։ Տես Եզեկ․ խէ․ 13, ա ։
Գ Ծն․ ժդ․ 3 ։ Յես․ ժե․ 2 ։
Դ Յես․ ժե․ 3 ։
Ե Գլ․ ժգ․ 26 ։ լբ․ 8 ։
Զ Տես Յես․ ժե․ 3, 4 ։
Է Ծն․ ժե․ 18 ։ Յես․ ժե․ 4, 47 ։ Գ Թագ․ ը․ 65 ։ Ես․ իէ․ 12 ։
Ը Գլ․ լգ․ 37 ։
Թ Գլ․ ժգ․ 22 ։ Դ Թագ․ ժդ․ 25 ։
Ժ Եզեկ․ խէ․ 15 ։
ԺԱ Եզեկ․ խէ․ 17 ։
ԺԲ Դ Թագ․ իգ․ 33 ։ Երեմ․ լթ․ 5, 6 ։
ԺԳ Բ Օր․ գ․ 17 ։ Յես․ ժա․ 2 ։ ժթ․ 35 ։ Մատ․ ժդ․ 34 ։ Ղուկ․ ե․ 1 ։
ԺԴ Հմր 3 ։
ԺԵ Հմր 1 ։ Յես․ ժդ․ 1, 2 ։
ԺԶ Գլ․ լբ․ 33 ։ Յես․ ժդ․ 2, 3 ։
ԺԷ Յես․ ժդ․ 1 ։ ժթ․ 51 ։
ԺԸ Գլ․ ա․ 4, 16 ։

Ն․Ք․ՎՔ․ 1451

ա Յես․ ԺԴ․ 3, 4 ։ ԻԱ․ 2 ։ Տես Եզեկ․ ԽԵ․ 1, Ե ։ ԽԸ․ Տ, Ե ։

* Եբր․ տուացուածքին

բ Հմր 13 ։ Բ Օր․ Դ․ 41 ։ Յես․ Ի 2, 7, Տ ։ ԻԱ․ 3, 13, 21, 27, 32, 36, 38 ։

գ Յես․ ԻԱ․ 41 ։

դ Յես․ ԻԱ․ 3 ։

ե Գլ․ ԻԶ․ 54 ։

զ Բ Օր․ ԺԹ․ 2 ։ Յես․ Ի․ 2 ։

է Ել․ ԻԱ․ 13 ։

ը Բ Օր․ ԺԹ․ 6 ։ Յես․ Ի․ 3, 5, 6 ։

թ Հմր 6 ։

ժ Բ Օր․ Դ․ 41 ։ Յես․ Ի․ Տ ։

31 Մարդասպանի մը համար փրկանք պիտի չընդունուէր ։

1 Եւ Տէրը Մովաբի դաշտերուն մէջ՝
Երիքովի դէմը Յորդանանու
մօտ՝ խօսեցաւ Մովսէսին՝ ըսելով.
2 ա Պատուիրէ Իսրայէլի որդւոցը, որ
իրենց ժառանգութեան կալուած-
քէն Ղեւտացւոց բնակելու քաղաք-
ներ տան. նաեւ քաղաքներուն բո-
լորտիքը եղած արուարձանները
3 Ղեւտացւոց պիտի տաք ։ Եւ քա-
ղաքները բնակութեան համար ըլ-
լան անոնց, ու արուարձանները՝
անոնց արջառներուն, * հօտերուն
ու բոլոր անասուններուն համար
4 ըլլան ։ Ու Ղեւտացւոց տալու
քաղաքներնուդ արուարձանները՝
քաղաքին պարիսպէն դուրս շուր-
ջանակի հազարական կանգուն ըն-
5 դարձակութիւն ունենան ։ Ուստի
քաղաքին դուրսը՝ արեւելեան կող-
մէն երկու հազար կանգուն, հա-
րաւային կողմէն՝ երկու հազար
կանգուն, արեւմտեան կողմէն՝ եր-
կու հազար կանգուն. ու հիւսի-
սային կողմէն՝ երկու հազար կան-
գուն չափեցէք. եւ քաղաքը մէջտեղը
պիտի ըլլայ. անոնց քաղաքներուն
6 արուարձանները ասանկ ըլլան ։ Եւ
ձեր Ղեւտացւոց տալու քաղաքնե-
րէն՝ բ վեցը ապաստանի քաղաք
ըլլալու որոշեցէք, որ սպաննողը հոն
փախչի. ու ասոնցմէ զատ՝ քառա-
սունըերկու քաղաք պիտի տաք ։
7 Ղեւտացւոց տալու քաղաքներնուդ
ամէնը՝ գ քառասունըութը քաղաք
ըլլայ. զանոնք իրենց արուարձան-
8 ներովը տաք ։ Եւ այն քաղաքները՝
որ դ Իսրայէլի որդւոցը կալուած-
քէն պիտի տաք, ե շատուոր եղողէն
շատ՝ ու քիչուոր եղողէն քիչ առ-
նեք. ամէն մէկը իր առած ժա-
ռանգութեանը չափովը՝ իր քա-
ղաքներէն Ղեւտացւոց պիտի տայ ։
9 Եւ Տէրը խօսեցաւ Մովսէսին՝ ը-
10 սելով. Իսրայէլի որդւոցը խօսէ՝
ու անոնց ըսէ. զ Երբոր Յորդա-
նանէն Քանանու երկիրը անցնիք.
11 է Ձեզի քաղաքներ որոշեցէք. որոնք
ապաստանի քաղաքներ ըլլան ձեզի,
որ սխալմամբ մարդ զարնող սպան-
12 նողը հոն փախչի ։ ը Եւ այն քա-
ղաքները ձեզի ապաստանարան ըլ-
լան՝ որպէս վրէժխնդիր եղողէն. ու
սպաննողը՝ դատաստանի համար
ժողովքին առջեւը չերեւցած՝ չմեռ-
13 նի ։ Եւ ձեր տալու քաղաքներէն
թ վեցը ձեզի ապաստանի քաղաք ըլ-
14 լայ ։ ժ Քաղաքներուն երեքը՝ Յոր-
դանանու ասդիի կողմը տաք, ու
քաղաքներուն երեքը՝ Քանանու
երկրին մէջ տաք. և անոնք ապաս-
15 տանի քաղաքներ ըլլան ։ Այս վեց
քաղաքները Իսրայէլի որդւոցը՝ ու
ժ օտարականին՝ և ձեր մէջը բնակող
պանդուխտին ապաստանարան ըլ-
լան. և ով որ սխալմամբ մարդ
մեռցընէ, հոն փախչի ։
16 Իսկ թէ որ մարդ մը երկաթէ գոր-
ծիքով մէկը զարնէ մեռցընէ, անի-
կայ մարդասպան է. մարդասպանը
17 անպատճառ պիտի մեռցուի ։ Կամ
թէ որ մահառիթ բռնաքարով մը
մէկու մը զարնէ, որ մեռնի, անի-
կայ մարդասպան է. մարդասպանը
18 անպատճառ պիտի մեռցուի ։ Կամ
թէ որ ձեռքով գործածուելու
փայտեղէն մահառիթ գործիքով
մը զարնէ, որ մեռնի, անիկայ մար-
դասպան է. մարդասպանը ան-
19 պատճառ պիտի մեռցուի. ի Արեան
վրէժխնդիրը պիտի մեռցընէ մար-
դասպանը. երբոր անոր հանդիպի՝
20 թող մեռցընէ զանիկայ ։ Կամ
ծ թէ որ թշնամութեամբ հրէ մէ-
կը, ու նենգութեամբ վրան բան
մը նետելով՝ զանիկայ մեռցընելու
21 ըլլայ. կամ թէ թշնամութեան
պատճառաւ՝ ձեռքովը զարնէ
անոր՝ որ մեռնի. զարնողը ան-
պատճառ մեռցուի. անիկայ մար-
դասպան է. արեան վրէժխնդիրը
երբոր մարդասպանին հանդիպի,
զանիկայ մեռցընէ ։
22 Բայց թէ որ յանկարծ ու հա-
ռանց թշնամութեան հրէ, կամ
թէ առանց նենգութեան անոր
23 վրայ մէկ գործիք մը նետէ, կամ
թէ առանց տեսնելու, անոր վրայ
ինչ և իցէ մահառիթ քար մը ձգէ,
որ մեռնի, և անիկայ անոր թշնա-
մին չէր, ու անոր չարիքը չէր ու-
24 զեր, յ Այն ատենը ժողովքը սպան-
նողին ու արեան վրէժխնդրին մէջ-
տեղը՝ աս օրէնքներուս համեմատ
25 դատաստան ընէ. Եւ ժողովքը պի-
տի ազատէ սպաննողը արեան վը-
րէժխնդրին ձեռքէն, ու ժողովքը
զանիկայ նորէն իր ապաւինած
ապաստանի քաղաքը դարձընէ. ու
ղ անիկայ հոն պիտի բնակի, մինչեւ
որ ճ սուրբ եղով օծուած քահա-
26 նայապետը մեռնի ։ Բայց թէ որ
սպաննողը՝ իր ապաւինած ապաս-
տանի քաղաքին սահմանէն անգամ
27 մը դուրս ելլէ, Ու արեան վրէժ-
խնդիրը՝ զանիկայ իր ապաստանի
քաղաքին սահմանէն դուրս գտնէ,
և արեան վրէժխնդիրը սպաննողը
մեռցընելու ըլլայ, մահապարտ
28 չսեպուի ։ Քանզի անիկայ իր ա-
պաստանի քաղաքը նստելու էր,
մինչեւ որ քահանայապետը մեռնէր.
բայց քահանայապետին մեռնելէն
ետքը՝ սպաննողը իր կալուածքին
29 երկիրը դառնայ ։ Ասոնք մ ձեզի

Ն․Ք․ՎՔ․ 1451

ժ Գլ․ ԺԵ․ 16 ։

ի Ել․ ԻԱ․ 12, 14 ։ Ղև․ ԻԴ․ 17 ։ Բ Օր․ ԺԹ․ 11, 12 ։

ի Հմր 21, 24, 27 ։ Բ Օր․ ԺԹ․ 6, 12 ։ Յես․ Ի․ 3, 5 ։

ծ Ծն․ Դ․ 8 ։ Բ Թագ․ Գ․ 27 ։ Ի․ 10 ։ Գ Թագ․ Բ․ 31, 32 ։

կ Ել․ ԻԱ․ 14 ։ Բ Օր․ ԺԹ․ 11 ։

հ Ել․ ԻԱ․ 13 ։

յ Հմր 12 ։ Յես․ Ի․ 6 ։

ղ Յես․ Ի․ 6 ։

ճ Ել․ ԻԹ․ 7 ։ Ղև․ Դ․ 3 ։ ԻԱ․ 10 ։

մ Գլ․ ԻԷ․ 11 ։

Ն․ Ք․ Գ․Ք․
1451

դատաստանի կանոններ ըլլան ձեր
ազգերուն մէջ ու ձեր բոլոր բնա-
կութեանցը մէջ ։
30 Ո՛վ որ մարդ կը մեռցնէ , ըս-
պաննողը ա վկաներուն բերնովը
մեռցուի ․ բայց մարդ մը մեռցնե-
լու համար , մէյ մը մէկ վկային վկա-
31 յութիւնը բաւական չըլլայ ։ Եւ
մահապարտ սպաննողին կենացը
համար փրկանք չառնէք ․ քան-
զի անիկայ անպատճառ մեռցուե-
32 լու է ։ Ու ապաստանի քաղա-
քը փախչողին համար փրկանք
չառնէք , որպէս զի անիկայ իր
քաղաքը դառնայ նստի՝ քահա-
33 նայապետին մահէն առաջ ։ Ուս-
տի ձեր բնակած երկիրը չպղ-
ծէք ․ քանզի արիւնը բ կը պղծէ
երկիրը ․ ու անոր մէջը թափուած
արիւնին համար՝ երկրին ուրիշ
բանով մը քաւութիւն չըլլար , բայց
եթէ գ անիկայ թափողին արիւ-
34 նովը ։ դ Ուրեմն ձեր բնակած երկիրը
չպղծէք , որուն մէջտեղը ես պիտի
բնակիմ ․ քանզի ե ես Տէրս կը
բնակիմ Իսրայէլի որդւոց մէջը ։

ա Բ Օր․ ԺԷ․ 6 ։ ԺԹ․ 15 ։ Մատ․ ԺԸ․ 16 ։ Բ Կոր․ ԺԳ․ 1 ։ Եբր․ Ժ․ 28 ։
բ Սաղ․ ՃԶ․ 38 ։ Միք․ Դ․ 11 ։
գ Ծն․ Թ․ 6 ։
դ Ղև․ ԺԸ․ 25 ։ Բ Օր․ ԻԱ․ 23 ։
ե Ել․ ԻԹ․ 45 , 46 ։

## ԳԼ․ ԼԶ

1 Ժառանգութիւն ունեցող աղջիկը՝ 5 իր ցեղէն եղող մէկու մը հետ պիտի կարգուէր , 7 որ չըլլայ թէ ժառանգութիւնը ան ցեղէն վերնայ ։ 10 Սալպաադին աղջիկները՝ իրենց հօրեղբօրորդւոցը հետ կ'ամուսնանան ։

1 Ու Յովսէփի որդւոցը տոհմերէն՝
Մանասէի որդւոյն Մաքիրի որ-
դւոյն ա Գաղաադին որդւոցը տոհ-
մին իշխանները մօտեցան , ու
Մովսէսին առջեւը՝ և Իսրայէլի որ-
դւոցը նահապետութեանց իշխան-
2 ներուն առջեւը խօսեցան , Ու ըսին ․
բ Տէրը մեր տիրոջը հրամայեց , որ
երկիրը Իսրայէլի որդւոցը վիճակով
ժառանգութիւն տայ ․ ու գ Տէրը
մեր տիրոջը հրամայեց , որ մեր
եղբօրը Սալպաադին ժառանգու-
թիւնը՝ անոր աղջիկներուն տայ ․
3 Արդ՝ թէ որ անոնք Իսրայէլի որ-
դւոց ուրիշ ցեղի մը որդւոցը կնիկ
ըլլան , անոնց ժառանգութիւնը
մեր հայրերուն ժառանգութենէն
պիտի վերնայ ․ ու որ ցեղէ մար-
դոց որ կնիկ ըլլան , ան ցեղին ժա-
ռանգութեանը պիտի խառնուի ,
ու մեր ժառանգութեանը վիճա-
4 կէն պիտի վերնայ ։ Եւ Իսրա-
յէլի որդւոցը դ Յոբելեան գալուն ,
անոնց ժառանգութիւնը՝ իրենց է-
րիկներուն ցեղին ժառանգութեա-
նը պիտի խառնուի ․ ու այս կերպով
անոնց ժառանգութիւնը՝ մեր հայ-
րերուն ցեղին ժառանգութենէն
պիտի վերնայ ։
5 Եւ Մովսէս՝ Տէրոջը հրամանաւը
Իսրայէլի որդւոցը պատուիրեց ու
ըսաւ ․ Յովսէփի որդւոց ցեղը ե շի-
6 տակ կը խօսի ։ Սալպաադին աղ-
ջիկներուն վրայով Տէրոջը հրամա-
յած ու ըսած խօսքը աս է ․ Անոնք՝
որոնց որ կը հաճին , թող անոնց
կնիկ ըլլան , զ միայն թէ իրենց հօ-
րը ցեղէն եղողներուն կնիկ ըլլան ․
7 Որպէս զի Իսրայէլի որդւոցը ժա-
ռանգութիւնը մէկ ցեղէ ուրիշ ցեղ
չանցնի ․ քանզի Իսրայէլի որդւոցը
ամէնքն ալ՝ է իրենց հայրերուն ցե-
ղին ժառանգութեանը պիտի յա-
8 րին ։ Եւ ը ամէն աղջիկ՝ որ Իսրայէ-
լի որդւոցը ցեղերուն մէջ՝ մէկ կա-
լուածքի մը ժառանգ կ'ըլլայ , իր
հօրը ցեղէն եղող մէկու մը կնիկ
ըլլայ , որ Իսրայէլի որդւոցը ամէն
մէկը իր հայրերուն ժառանգու-
9 թիւնը ժառանգէ ․ Եւ ժառան-
գութիւնը՝ մէկ ցեղէ ուրիշ ցեղ
չանցնի ․ բայց Իսրայէլի որդւոցը
ցեղերուն ամէն մէկը իր ժառան-
գութեանը յարի ։
10 Եւ Տէրը Մովսէսին ինչպէս որ
հրամայեց , Սալպաադին աղջիկները
11 անանկ ըրին ։ թ Քանզի Սալպաա-
դին աղջիկները՝ Մաալան , Թեր-
սան , Էգղան , Մեղքան ու Նուան՝
իրենց հօրեղբօրորդւոցը հետ կար-
12 գուեցան ։ Այսպէս՝ Յովսէփեան
Մանասէին որդւոցը տոհմերէն ե-
ղողներու կնիկ եղան ․ ու անոնց
ժառանգութիւնը՝ իրենց հօրը ցե-
ղին և ազգատոհմին մէջ մնաց ։
13 Ասոնք են ան պատուիրանքները
ու դատաստանները , որ Տէրը ժ Մո-
վաբի դաշտերուն մէջ՝ Երիքովի դի-
մացը Յորդանանու մօտ՝ Մովսէսին
ձեռքովը Իսրայէլի որդւոցը պա-
տուիրեց ։

ա Գլ․ ԻԶ․ 29 ։
բ Գլ․ ԻԶ․ 55 ։ ԼԳ․ 54 ։ Յես․ ԺԷ․ 3 ։
գ Գլ․ ԻԷ․ 1․ 7 ։ Յես․ ԺԷ․ 3 , 4 ։
դ Ղև․ ԻԵ․ 10 ։
ե Գլ․ ԻԷ․ 7 ։
զ Հմր 12 ։
է Գ Թագ․ ԻԱ․ 3 ։
ը Ա Մն․ ԻԳ․ 22 ։
թ Գլ․ ԻԷ․ 1 ։
ժ Գլ․ ԻԶ․ 3 ։ ԼԳ․ 50 ։

# ԳԻՐՔ ԵՐԿՐՈՐԴ ՕՐԻՆԱՑ

## ԳԼՈՒԽ Ա

1 Քառասներորդ տարւոյն վերջը՝ Մովսէս Իսրայէլացւոց խօսելով՝ համառօտութեամբ կը պատմէ 6 Աստուծոյ խոստմունքը, 13 իշխաններ կարգելը, 19 երկիրը լրտեսելու համար մարդ խրկելը, 34 անոնց անհաւատութեանը պատճառով Աստուծոյ բարկութիւնը, 41 և անոնց անհնազանդութիւնը.

1 Ասոնք են այն խօսքերը՝ որ Մովսէս
բոլոր Իսրայէլին զրուցեց ա Յոր-
դանանու ասդին կողմը՝ անապա-
տին մէջ՝ որ Սուփին դիմացի դաշտը՝
Փառանի, Տոփէլի, Ղոբանի, Ա-
սերովթի ու Տիզահապի մէջտեղն
2 է։ (Քորեբէն բ մինչև Կադէս
բառնեայ՝ տասնումէկ օր է՝ Սէիր
3 լեռանը ճամբայով։) Արդ՝ գքա-
ռասներորդ տարին մետասաներորդ
ամսուն առաջին օրը՝ Մովսէս Իս-
րայէլի որդւոցը զրուցեց ինչ որ
Տէրը անոր պատուիրեր էր անոնց
4 համար, դԵսեբոնի մէջ բնակող
Ամորհացւոց Սեհոն թագաւորը, և
Աստարովթի ու եԵդրայիի մէջ
բնակող Բասանի Ովգ թագաւորը
5 զարնելէն ետքը. Յորդանանու աս-
դին կողմը Մովաբի երկրին մէջ՝
Մովսէս սկսաւ աս օրէնքը յայտ-
նել, ըսելով.
6 Մեր Տէր Աստուածը՝ զՔորեբի
վրայ մեզի խօսեցաւ ու ըսաւ. Աս
7 լեռը կենալնիդ էհերիք է. Դարձէք՝
չուեցէք, ու գացէք Ամորհացւոց
լեռը, և անոր ամէն շրջակայ տե-
ղերը, դաշտերը, լեռները, ու հո-
վիտները, և հարաւային կողմը, ու
ծովեզերքը, Քանանացւոց երկիրը,
ու Լիբանանը, մինչև մեծ գետը՝ որ
8 Եփրատ գետն է։ Ահա այն երկի-
րը ձեր առջևը դրի. գացէք ու ժա-
ռանգեցէք այն երկիրը, որ Տէրը
ձեր հայրերուն՝ ըԱբրահամին՝ Իսա-
հակին ու Յակոբին երդում ըրաւ
որ տայ անոնց՝ ու անոնցմէ ետքը
անոնց զաւակներուն։
9 Եւ թայն ատենը ես ձեզի խօսեցայ՝
ու ըսի. Ես մինակ չեմ կրնար ձեզ
10 տանիլ. Ձեր Տէր Աստուածը ձեզ
շատցուց, և ահա ժդուք այսօր
երկինքի աստղերուն չափ շատ էք։
11 իՁեր հայրերուն Տէր Աստուածը՝
ձեր եղածէն հազարապատիկ աւել-
ցընէ ձեզ, ու լձեզի ըսածին պէս
12 ձեզ օրհնէ։ խԵս մինակ ի՞նչպէս

Ն. Ք. Ա. 1451
ա Յես. Թ. 1. 10. Իբ. 4. 7.
բ Թուոց. ժգ. 27. Գլ. Թ. 23.
գ Թուոց. Լգ. 35.
դ Թուոց. Իա. 24. 33.
ե Թուոց. Իա. 33. Յես. Ժգ. 12.
զ Ել. Գ. 1.
է Յես. Ել. ԺԹ. 1. Թուոց. Ժ. 11.
ը Ծն. ԺԲ. 7. ԺԵ. 18. ԺԷ. 7. 8. ԻԶ. 4. ԻԸ. 13.
թ Ել. ԺԸ. 18. Թուոց. ԺԱ. 14.
ժ Ծն. ԺԵ. 5. Գլ. Ժ. 22. ԻԸ. 62.
ի Բ Թագ. ԻԴ. 3.
լ Ծն. ԺԵ. 5. ԻԲ. 17. ԻԶ. 4. Ել. ԼԲ. 13.
խ Գ Թագ. Գ. 8. 9.

կրնամ՝ ձեր նեղութիւնը՝ ձեր բե-
ռը ու հակառակութիւնը կրել։
13 ծԴուք ձեր ցեղերէն իմաստուն ու
հանճարեղ և անուանի մարդիկներ
տուէք, ու ես անոնք ձեր վրայ իշ-
14 խաններ կեցընեմ։ Իսկ դուք ինծի
պատասխան տուիք, ու ըսիք թէ՝
Աս ըսած խօսքդ ընելը աղէկ է։
15 Ուստի ես ձեր ցեղերուն երևելիները՝
իմաստուն ու անուանի մարդիկնե-
րը առի, կև զանոնք ձեր վրայ իշ-
խաններ կարգեցի, այսինքն ձեր ցե-
ղերուն համար հազարապետներ,
հարիւրապետներ, յիսնապետներ,
տասնապետներ, ու ոստիկաններ։
16 Եւ այն ատենը ձեր դատաւորնե-
րուն պատուիրեցի՝ ըսելով. Ձեր
եղբայրներուն դատերը մտիկ ըրէք,
ու ամէն մարդուն դատը՝ թէ իր
հեղբօրը հետ ըլլայ և թէ օտարա-
կանի հետ, ձարդարութեամբ դա-
17 տեցէք. ղԴատաստանի մէջ աչա-
ռութիւն չընէք. պզտիկին՝ մեծի
պէս մտիկ ընէք, բնաւ մարդու մը
երեսէ չքաշուիք. քանզի ճդատաս-
տանը Աստուծոյ է. ու ձեզի դը-
ժուար երևցած դատը մինծի ներ-
կայացուցէք, որ անիկայ մտիկ ը-
18 նեմ։ Եւ այն ատենը ձեր ամէն ը-
նելու բաները ձեզի պատուիրեցի։
19 Ետքը Քորեբէն չուեցինք. ու
ինչպէս որ մեր Տէր Աստուածը մե-
զի պատուիրեր էր, Ամորհացւոց
լեռանը ճամբովը՝ այն ձեր տեսած
բոլոր յմեծ ու ահագին անապատէն
անցանք, ու նմինչև Կադէս բառ-
20 նեայ եկանք։ Եւ ձեզի ըսի. Դուք
Ամորհացւոց լեռը եկաք, որն որ
մեր Տէր Աստուածը մեզի կու տայ։
21 Նայէ, քու Տէր Աստուածդ երկի-
րը քու առջևդ դրաւ. շելի՛ր
ժառանգէ՛ զանիկայ, ինչպէս որ քու
հայրերուդ Տէր Աստուածը քեզի
ըսաւ. ոմի՛ վախնար ու մի՛ զար-
հուրիր։
22 Եւ դուք ամէնքդ իմ քովս եկաք,
ու ինծի ըսիք. Մեզմէ առաջ մար-
դիկներ խրկենք, որ երկիրը լրտե-
սեն մեզի համար, ու մեզի գան
պատմեն՝ թէ ինչ ճամբով հոն պի-
տի ելլենք, ու ինչ քաղաքներու
23 մէջ պիտի մտնենք։ Եւ աս խօսքը
ինծի հաճոյ թուելով, չձեզմէ

Ն. Ք. Ա. 1451
ծ Յես. Ել. ԺԸ. 21. Թուոց. ԺԱ. 16. 17.
կ Ել. ԺԸ. 25.
հ Ղև. ԺԹ. 22.
ձ Գլ. Ժզ. 18. Յօհ. Է. 24.
ղ Ղև. ԺԹ. 15. Գլ. Ժզ. 19. Ա Թագ. ԺԶ. 7. Առակ. ԻԴ. 23. Յակ. Բ. 1.
ճ Բ Մն. ԺԹ. 6.
մ Ել. ԺԸ. 22. 26.
1490
յ Թուոց. Ժ. 12. Գլ. Ը. 15. Երեմ. Բ. 6.
ն Թուոց. Ժգ. 27.
շ Յես. Ա. 9.
ո Թուոց. Ժգ. 4.
1490

Ն. Ք. ԴՔ.
1451

չ Թուոց. ժգ. 23, 24, 25։
պ Թուոց. ժգ. 28։
ջ Թուոց. ժդ. 1—4։ Սաղ. ճզ. 24, 25։
ռ Գլ. Թ. 28։
ս Յես. բ. 11։
վ Թուոց. ժգ. 29, 32, 33, 34։ Գլ. Թ. 1, 2։
տ Թուոց. ժգ. 29։
ր Ել. ժդ. 14. 25։ Նեեմ. դ. 20։
ց Ել. ժԹ. 4։ Գլ. լբ. 11, 12։ Ես. խգ. 3, 4։ Կզ. 9։ Ովս. ժա. 3։ Տես Գործ. ժգ. 18։
ւ Սաղ. ճզ. 24։ Յուդ. 5։
փ Ել. ժդ. 21։ Սաղ. ՀԸ. 14։
ք Թուոց. Ժ. 33։ Եզեկ. Ի. 6։
օ Գլ. բ. 14, 15։
ֆ Թուոց. ժդ. 22, 23։ Սաղ. ՂԵ. 11։
ա Թուոց. ժդ. 24. 30։ Յես. ժդ. 9։
1491
բ Թուոց. ժդ. 24։
գ Թուոց. Ի. 12։ ԻԷ. 14։ Գլ. գ. 26։ դ. 21։ ԼԴ. 4։ Սաղ. ճզ. 32։
դ Ել. Իդ. 13։ ԼԳ. 11։ Տես ա Թագ. ժզ. 22։
ե Թուոց. ժդ. 30։
զ Թուոց. ԻԷ. 18, 19։ Գլ. լա. 7, 23։
է Թուոց. ժդ. 31։
ը Թուոց. ժդ. 3։

տասներկու մարդ առի, ամէն մէկ
24 ցեղէն մէ մէկ մարդ։ Եւ նանոնք
գացին՝ լեռը ելան, ու մինչեւ Եսքողի
ձորը հասան, ու անիկա
25 լրտեսեցին։ Եւ ան երկրին պտուղէն
ձեռքերնին առնելով՝ մեզի բերին.
ու մեզի զրուցեցին ըսելով.
պԱղէկ է ան երկիրը՝ որ մեր Տէր
26 Աստուածը մեզի կու տայ։ ջԲայց
դուք չուզեցիք ելլել, ու ձեր Տէր
Աստուծոյն հրամանին դէմ դրիք.
27 Եւ ձեր վրաններուն մէջ տրտնջելով՝
ըսիք. Տէրը ռմեզ ատելուն
համար՝ Եգիպտոսի երկրէն մեզ
դուրս հանեց, որ մեզ Ամորհացւոց
ձեռքը մատնէ, ու մեզ կորսնցընէ։
28 Ո՞ւր պիտի ելլենք. մեր եղբայրները
սմեր սիրտերը թուլցուցին,
որովհետեւ ըսին. վԱն ազգը
մեզմէ մեծ ու բարձրահասակ է.
քաղաքները մեծ, ու մինչեւ երկինքը
պարսպաւոր են. ու հոն նաեւ
29 տԵնակին որդիքը տեսանք։ Եւ ձեզի
ըսի. Մի զարհուրիք, ու անոնցմէ
30 մի՛ վախնաք. րՁեր Տէր
Աստուածը՝ որ ձեր առջեւէն կ՚երթայ,
անիկայ ձեզի համար պիտի
պատերազմի, ինչպէս որ Եգիպտոսի
մէջ ձեր աչքերուն առջեւ ձեզի
31 ըրաւ։ Ու անապատին մէջն
ալ տեսար որ, ցինչպէս մարդ մը իր
զաւակը կը տանի, քու Տէր Աստուածդ
ալ՝ քու բոլոր քալած
ճամբաներուդ մէջը մինչեւ աս տեղ
32 գալդ քեզ անանկ տարաւ։ Եւ
ասով ալ ւձեր Տէր Աստուծոյն չհաւատացիք,
33 փՈր անիկայ ճամբուն
մէջ ձեր առջեւէն կ՚երթար՝ քձեզի
իջեւանելու տեղ փնտռելու համար,
գիշերը կրակի մէջ՝ երթալու ճամբանիդ
ձեզի ցուցընելով, ու ցորեկն
34 ալ ամպի մէջ։ Եւ Տէրը
ձեր խօսքերուն ձայնը լսելով՝ բարկացաւ,
օու երդում ընելով՝ ըսաւ.
35 ֆԱս մարդիկներէն՝ աս անօրէն ազգէն
բնաւ մարդ մը պիտի չտեսնէ
ան բարի երկիրը՝ որն որ ձեր հայրերուն
տալու երդում ըրի.
36 աԲայց միայն Յեփոնէին որդին Քաղէբը
պիտի տեսնէ ան. ու անոր
կոխած երկիրը՝ իրեն ու իր որդւոցը
պիտի տամ. որովհետեւ բանիկայ
կատարելապէս Տէրոջը հետեւեցաւ։
37 գՁեզի համար Տէրը ինծի ալ
բարկացաւ՝ ու ըսաւ. Դուն ալ
38 հոն պիտի չմտնես. Այլ դքու սպասաւորդ
եՆաւէի որդին Յեսուն՝ անիկայ
հոն պիտի մտնէ. Ղօրացուր
անիկայ. վասն զի ան զԻսրայէլը՝
անիկայ պիտի ժառանգեցընէ Իսրայէլին։
39 էԵւ ան ձեր պզտիկ
տղաքը՝ որոնց համար ըկ՚ըսէիք թէ
աւար պիտի ըլլան, ու ան ձեր

որդիները՝ որ այսօր բարիկը ու
գէշը չեն ճանչնար, անոնք պիտի
մտնեն հոն. անոնց պիտի տամ ան
երկիրը, ու անոնք պիտի ժառանգեն
40 ան։ ժԲայց դուք ետ դարձէք, ու
Կարմիր ծովուն ճամբայէն՝ դէպ 'ի
անապատը չուեցէք։
41 Ետքը դուք պատասխան տուիք,
ու ինծի ըսիք. իՄենք Տէրոջը առջեւ
մեղք գործեցինք. մենք պիտի
ելլենք պատերազմինք, ինչպէս որ
մեր Տէր Աստուածը մեզի պատուիրեց.
ու ամէն մէկերնիդ իր պատերազմական
զէնքը առնելով՝ *պատրաստութիւն
տեսաք՝՝ լեռը ելլելու։
42 Եւ Տէրը ինծի ըսաւ. Անոնց ըսէ.
լՄի ելլէք՝ ու մի՛ պատերազմիք.
քանզի ես ձեր մէջը չեմ. չըլլայ որ
ձեր թշնամիներուն առջեւը զարնուիք։
43 Ես ալ ձեզի խօսեցայ.
բայց դուք մտիկ չըրիք, հապա
Տէրոջը հրամանին դէմ դրիք, և
խյամառութիւն ընելով՝ լեռը ելաք։
44 Ու ան լեռանը վրայ բնակող
Ամորհացիները ծմեղուներու պէս
ձեր դէմը ելլելով՝ ձեզ հալածեցին,
ու Սէիրի մէջ ձեզ զարկին մինչեւ
45 Հօրմա։ Եւ դառնալով Տէրոջը
առջեւը լացիք. սակայն Տէրը ձեր
ձայնը չլսեց, ու ձեզի ականջ
46 չդրաւ։ կԵւ Կադէսի մէջ շատ օրեր
կեցաք, որչափ օրեր որ հոն կեցաք։

ԳԼ. Բ

1 Մովսէս իր խօսքը շարունակելով՝ կը պատմէ թէ Աստուած ինչպէս արգիլեց Իսրայէլացիները՝ որ Եդովմայեցւոց, 9 Մովաբացւոց, 17 և Ամմոնացւոց հետ պատերազմ չընեն. 24 Ամորհացւոց Սեհոն թագաւորին յաղթուիլը։

1 Ու՛ն ատենը ետ դարձանք ու Կարմիր
ծովուն ճամբայէն՝ դէպ 'ի
անապատը չուեցինք, աինչպէս որ
Տէրը ինծի ըսեր էր. ու շատ օրեր
Սէիր լեռանը բոլորտիքը պտըտեցանք։
2 Եւ Տէրը ինծի խօսեցաւ՝
3 ու ըսաւ. բԱլ հերիք է աս լեռանը
բոլորտիքը պտըտելնիդ. հիւսիսային
4 կողմը դարձէք։ Եւ ժողովուրդին
պատուիրէ ու ըսէ. գԴուք
հիմա Սէիր բնակող ձեր եղբարցը
Եսաւի որդւոցը սահմանէն պիտի
անցնիք. անոնք ձեզմէ պիտի վախնան,
բայց դուք մեծապէս զգուշացէ՛ք.
5 Անոնց հետ մի՛ ծեծկուիք.
քանզի ես ձեզի անոնց երկրէն մէկ
ոտնաքայլ տեղ մըն ալ տալու չեմ,
դորովհետեւ Սէիր լեռը՝ Եսաւին
6 ժառանգութիւն տուեր եմ։ Կերակուրը
ստակով ծախու առնէք
անոնցմէ՝ ու ուտէք, և ջուրն ալ
ստակով ծախու առնէք անոնցմէ՝
7 ու խմէք։ Քանզի քու Տէր Աստուածդ
քու ձեռքերուդ ամէն
գործքերուն մէջ օրհնեց քեզ. ա-

Ն. Ք. ԴՔ.
1451

ի Ես. Է. 15, 16։ Հռովմ. Թ. 11։
ժ Թուոց. ժդ. 25։
ի Թուոց. ժդ. 40։
* Կամ՝ ժողովուեցաք․ կամ՝ թեթեւամտութիւն ըրիք
լ Թուոց. ժդ. 42։
խ Թուոց. ժդ. 44, 45։
ծ Սաղ. ճԺԸ. 12։
կ Թուոց. ժգ. 26, Ի. 1, 22։ Դատ. ժա. 17։

ա Թուոց. ժդ. 25։ Գլ. ա. 40։
բ Տես Հմր. ? 14։
գ Թուոց. Ի. 14, ...
դ Ծն. ԼԶ. 8։ Յես. իդ. 4։

Ն · ք · զՔ · 1451

ա Գլ · ը · 2 , 3 , 4 ։ նիկայ զիտէ որ դուն աս մեծ անա-
պատին մէջ կը պտըտիս . Էքու Տէր
Աստուածդ աս քառասուն տարին
քեզի հետ էր , ու բանի մը պակսու-
թիւն չքաշեցիր ։
բ Դատ . ժա . 18 ։ 8 ՂՈւստի մենք մեր եղբայրներուն՝
Եսաւի որդւոցը քովէն՝ որոնք Սէիր
կը բնակէին , դաշտի ճամբայէն՝
գ Գ Թագ · Թ · 26 ։ Բ Եղաթէն ու Գասիոն գաբերէն ան-
ցանք . ու անկէ դառնալով՝ Մովա-
բի անապատին ճամբայէն անցանք ։
9 Եւ Տէրը ինծի ըսաւ . Մովաբա-
ցւոց թշնամութիւն մի՛ ըներ , ու
անոնց հետ պատերազմ մի՛ ըներ .
քանզի անոնց երկրէն քեզի ժառան-
դութիւն տալու չեմ . որովհետեւ
ե Թու . իա . 28 ։ ԷԱրը՝ Բ Ղովտի որդւոցը ժառան-
10 դութիւն տուի ։ (Ան տեղը առա-
ա Ծն . ժԹ . 36 , 37 ։ ջուց Է Էմիմները կը բնակէին , որոնք
է Ծն . ժդ . 5 ։ մեծ ու շատուոր , ու Է Ենակիմներուն
պէս երկայնահասակ ազգ մըն էին .
ը Թու . ժգ . 23 , 34 ։ Գլ . Թ . 2 ։ 11 Անոնք ալ Ենակիմներուն պէս հսկա-
ներ կը սեպուէին . ու Մովաբացիք
12 անոնց Էմիմ կը կանչէին ։ Եւ
ս Հմր 22 ։ Ծն . ժդ . 6 ։ Լէ · 20 ։ Սէիրը՝ առաջուց Ն Քոռեցիք կը
բնակէին . բայց Եսաւի որդիքը
զանոնք վռընտելով՝ ու իրենց առ-
ջեւէն զանոնք ջարդերով՝ անոնց
տեղը բնակեցան . ինչպէս որ Իսրա-
յէլացիք ըրին իրենց ժառանգու-
թեանը երկրին ; որն որ Տէրը ա-
ի Թու . իա . 12 ։ 13 նոնց տուաւ ։) Հիմա ելէ՛ք Է Զա-
րեդ ձորէն անցէ՛ք . ու մենք Զարեդ
ձորէն անցանք ։
ձ Թու . ժգ . 27 ։ 14 Մեր պտըտած օրերը՝ ԺԿադէս
բառնեայէն ելլելէն մինչեւ Զարեդ
ձորէն անցնելնիս՝ երսունըութը
լ Թու . ժգ . 33 ։ Եզ . 64 ։ տարի եղաւ . Լմինչեւ որ բանակին
մէջէն պատերազմող մարդոց ան
բոլոր ազգը հատաւ , Խինչպէս որ
խ Թու . ժգ . 35 ։ Գլ . ա . 34 , 35 ։ Եզկ . ի . 15 ։ 15 Տէրը անոնց երդում ըրեր էր ։ Եւ
զանոնք բանակին մէջէն բնաջինջ
ընելու համար՝ ԾՏէրոջը ձեռքն ալ
ծ Սաղ . հը . 33 ։ Ճգ . 26 ։ անոնց վրայ էր , մինչեւ որ անոնք
16 հատան ։ Ու երբոր բոլոր պատե-
րազմող մարդիկները ժողովուրդին
17 մէջէն մեռան ու հատան , Տէրը ինծի
18 խօսեցաւ՝ ըսելով . Դուն այսօր Մո-
վաբին սահմանը եղած Արէն պիտի
19 անցնիս . Ու Ամմոնի որդւոցը սահ-
մանին պիտի մօտենաս . անոնց
թշնամութիւն մի՛ ըներ , և անոնց
հետ մի՛ ծեծկուիր . քանզի Ամմոնի
որդւոցը երկրէն քեզի ժառանգու-
թիւն տալու չեմ . որովհետեւ անի-
կ Ծն . ժԹ . 38 ։ կայ ԿՂովտի որդւոցը ժառանգու-
20 թիւն տուի ։ (Ան ալ հսկաներու
երկիր կը սեպուէր . առաջուց ան
տեղը հսկաներ կը բնակէին . ու
հ Ծն . ժդ . 5 ։ Ամմոնացիք անոնց ՀԶամզումիմ կը
21 կանչէին , Որոնք Ենակիմներուն
ձ Տէս Հմր 10 ։ պէս Ձ մեծ ու շատուոր և երկայնա-
հասակ ազգ մըն էին . բայց Տէրը
զանոնք բնաջինջ ըրաւ անոնց առ-
ջեւէն , որ վռընտեցին զանոնք , և
22 անոնց տեղը բնակեցան . Ինչպէս
որ ՂՍէիր բնակող Եսաւի որդւոցը Ղ Ծն . ԼԶ . 8 ։
համար ալ ըրաւ , երբոր Ճ Քոռեցի- ճ Ծն . ժդ . 6 ։ Լզ . 20 — 30 ։ Հմր 12 ։
ները բնաջինջ ըրաւ անոնց առ-
ջեւէն . և զանոնք վռընտեցին , ու
անոնց տեղը բնակեցան մինչեւ աս
23 օրս ։ Եւ ՄԱւացիները՝ որ մինչեւ մ Յես . ժդ . 3 ։
ՅԳազա *գիւղաքաղաքներու մէջ յ Երեմ . իե . 20 ։
կը բնակէին , զանոնք ալ Կափթո- * Կամ՝ Ասե-րիմ
րէն ելլող ՆԿափթորացիք ջարդե- ն Ծն . ժ . 14 ։ Ամով . Թ . 7 ։
ցին , ու անոնց տեղը բնակեցան ։)
24 Ելէ՛ք , չուեցէ՛ք , ու ՇԱռնոն ձո- շ Թու . իա . 13 , 14 ։ Դատ . ժա . 18 , 21 ։
րէն անցէ՛ք . ահա Եսեբոնի թա-
գաւորը՝ Ամորհացի Սեհոնը ու ա-
նոր երկիրը քու ձեռքդ տուի .
սկսէ անիկայ ժառանգելու , ու ա-
25 նոր հետ պատերազմ ըրէ ։ ՈԱյսօր ո Ել . ժե . 14 , 15 ։ Գլ . ժա . 25 ։
քու անունդ վախը ու սոսկումը՝ Յես . բ . 9 , 10 ։
բոլոր երկինքին տակը եղող ազգե-
րուն վրայ պիտի սկսիմ դնել , ա-
նանկ որ՝ քու համբաւդ լսողները
քու երեսէդ դողան ու տագնա-
պին ։
26 Եւ Կադեմօթի անապատէն՝ Ե-
սեբոնի Սեհոն թագաւորին Չխա- չ Գլ . ի . 10 ։
ղաղութեան խօսքերով դեսպան-
27 ներ խրկեցի՝ ըսելով . ՊԱնցնիմ պ Թու . իա . 21 , 22 ։
քու երկրէդ . †մեծ ճամբայէն" Դատ . ժա . 19 ։
պիտի երթամ , առանց աջ կամ ձախ
28 կողմը չեմ խոտորիր ։ Կերակուրը † Եբր . ճամ-բայէն ճամ-բայէն
ինծի ստակով ծախէ՝ որ ուտեմ ,
ու ջուրն ալ ինծի ստակով տուր՝
որ խմեմ . Ջմիայն թէ ոտքերովս ջ Թու . ի . 19 ։
29 անցնիմ . Ինչպէս որ ՌՍէիրը բնա- ռ Տես Թու . ի . 18 ։ Գլ . իգ . 3 , 4 ։
կող Եսաւի որդիքը՝ ու Արը բնա- Դատ . ժա . 17 , 18 ։
կող Մովաբացիք ինծի ըրին . մինչեւ
որ ես Յորդանանէն անցնիմ դէպ 'ի
ան երկիրը , որն որ մեր Տէր Աս-
30 տուածը մեզի պիտի տայ ։ ՍԲայց ս Թու . իա . 23 ։
Եսեբոնի Սեհոն թագաւորը չուզեց
որ մենք անկէ անցնինք . ինչու որ
Վքու Տէր Աստուածդ Տանոր հոգին վ Յես . ժա . 20 ։
խստացուցեր էր , ու սիրտը կարծ- տ Ել . դ . 21 ։
րացուցեր էր , որ զանիկայ քու
ձեռքդ տայ , ինչպէս որ այսօր կը
31 տեսնես ։ Եւ Տէրը ինծի ըսաւ .
Ահա ՐՍեհոնը ու անոր երկիրը ր Գլ . ա . 8 ։
սկսայ քու ձեռքդ տալու . սկսէ
անոր տիրելու , որ անոր երկիրը
ժառանգես ։
32 ՑՈւստի Սեհոն՝ ինքը իր բոլոր ց Թու . իա . 23 ։
ժողովուրդովը՝ Յասսայի մէջ մեր
դէմը ելաւ , որ մեզի հետ պատե-
33 րազմի ։ Եւ Ւմեր Տէր Աստուածը ւ Գլ . է . 2 ։ ի . 16 ։
զանիկայ մեր ձեռքը մատնեց . ու
Փմենք անիկայ՝ և անոր որդիքը՝ ու փ Թու . իա . 24 ։ Գլ . իԹ . 7 ։
անոր բոլոր ժողովուրդը զարկինք .
34 Եւ նոյն ատենը անոր բոլոր քա-
ղաքները առինք , ու անոր բոլոր քա-
ղաքներուն մէջ եղած էրիկ մար-
դիկները , կնիկները ու տղաքները

Ն. Ք. ԶՖ.
1451

Գլ. Է. 2, 26։
Գլ. Գ. 12։ Գ. 48։ Ցես. ԺԳ. 9։
Սաղ. ԽԳ. 3։
Ծն. ԼԸ. 22։ Թու. ԻԱ. 24։ Գլ. Գ. 16։ Հմր 5, 9, 19։

կորսընցուցինք. անոնցմէ մէկ մըն
35 ալ ողջ չթողուցինք. Միայն անա֊
սունները՝ ու առած քաղաքներնուս
36 աւարները մեզի առինք։ Առնոն
ձորին եզերքը եղած Արոերէն՝ ու
ձորին մէջը եղած քաղաքէն մինչև
Գաղաադը՝ բնաւ մեզի դէմ դնող
քաղաք մը չեղաւ. մեր Տէր Աս֊
տուածը ամէնն ալ մեր ձեռքը
37 մատնեց։ Միայն թէ Ամմոնի որ֊
դւոցը երկրին, ու բոլոր Յաբոկ
ձորին կողմերուն, և լեռնային քա֊
ղաքներուն, ու մեր Տէր Աստու֊
ծոյն բոլոր մեզի արգիլած տեղե֊
րուն չմօտեցար։

ԳԼ. Գ

1 Մովսէս կը պատմէ Բասանի Ովգ թագաւո֊
րին յաղթուիլը, 11 անոր մահիճին մեծու֊
թիւնը, 12 Սեհոնին ու Ովգին երկիրները եր֊
կուք ու կէս ցեղերուն տրուիլը, 23 և թէ ին֊
քը ինչպէս Քանանու երկիրը մտնելու ար֊
տօնութիւն խնդրեր էր Աստուծմէ, 26 և թէ
Տէրը հրամայեր էր որ միայն հեռուէն տեսնէ։

1 Ու նկէ դարձանք՝ Բասանի ճամբան
ելանք. ու Բասանի Ովգ թա֊
գաւորը ինքը իր բոլոր ժողովուր֊
դովը՝ Եդրայիի մէջ մեր դէմը ե֊
2 լաւ պատերազմելու համար։ Եւ
Տէրը ինծի ըսաւ. Անկէ մի՛ վախ֊
նար. վասն զի անիկայ ու անոր
բոլոր ժողովուրդը ու երկիրը քու
ձեռքդ կու տամ. ու անոր ալ՝
Եսեբոնի մէջ բնակող Ամորհա֊
ցւոց Սեհոն թագաւորին ըրածիդ
3 պէս ըրէ։ Եւ մեր Տէր Աստուա֊
ծը՝ Բասանի Ովգ թագաւորն ալ
ու անոր բոլոր ժողովուրդը մեր
ձեռքը տուաւ. և մենք անանկ
ջարդեցինք *զանոնք, որ անոնցմէ"
4 մէկ մըն ալ ողջ չմնաց։ Եւ նոյն
ատենը՝ անոր բոլոր քաղաքները
առինք. քաղաք մըն ալ չմը֊
նաց, որ անոնցմէ առած չըլլանք.
վաթսուն քաղաք՝ այսինքն բոլոր
Արգովբի գաւառը՝ Բասանի մէջ
5 Ովգին թագաւորութիւնը։ Ա֊
սոնց ամէնն ալ՝ բարձր պարիսպնե֊
րով, դռներով ու դռնափակներով
ամրացած քաղաքներ էին. անպա֊
րիսպ քաղաքներէն 'ի զատ՝ որոնք
6 խիստ շատ էին։ Եւ զանոնք բնա֊
ջինջ ըրինք, ինչպէս որ Եսեբոնի
Սեհոն թագաւորը ըրինք, ամէն
քաղաքներու մէջ՝ մարդիկները, կը֊
նիկները ու տղաքները կորսընցընե֊
7 լով. Սակայն բոլոր անասունները,
ու քաղաքներուն աւարները մեզի
8 առինք։ Եւ ան նոյն ժամանակին՝
Յորդանանու անդիի կողմը եղող
Ամորհացւոց երկու թագաւորնե֊
րուն ձեռքէն առինք երկիրը՝ Առ֊
նոն ձորէն մինչև Հերմոն լեռը։
9 Սիդոնացիք Հերմոնին՝ Սարիոն

Թու. ԻԱ. 33, ԵՒ։ Գլ. ԻԹ. 7։
Գլ. Ա. 4։
Թու. ԻԱ. 24։
Թու. ԻԱ. 35։
* Եբր. զա֊ նիկայ, որ անոր
Գթագ. Դ. 13։
Գլ. Բ. 24։ Սաղ. ՃԼԵ. 10, 11, 12։ ՃԼԶ. 19, 20, 21։
Գլ. Դ. 48։ Սաղ. ԻԹ. 6։

կ'ըսէին. բայց Ամորհացիք զանիկայ
10 Սանիր կը կոչէին։ Բոլոր դաշտի
քաղաքները՝ բոլոր Գաղաադը՝ ու
բոլոր Բասանը՝ մինչև Սելքա ու
Եդրայի՝ Բասանի մէջ եղած Ովգին
թագաւորութեանը քաղաքները
11 առինք։ Քանզի Հսկաներուն մը֊
նացորդէն՝ միայն Բասանի Ովգ
թագաւորը մնացեր էր. ահա անոր
մահիճը՝ որ երկաթէ մահիճ մըն է,
Ամմոնի որդւոցը Ռաբբային մէջը
չէ՞ որ է. երկայնութիւնը ինը կան֊
գուն է, ու լայնութիւնը չորս
կանգուն է, մարդու կանգունով։
12 Եւ նոյն ժամանակին մէջ՝ աս
մեր առած երկիրը՝ Առնոն ձորին
վրայ եղող Արոերէն մինչև Գաղա֊
ադ լեռանը կէսը՝ իր քաղաքնե֊
րովը՝ Ռուբէնեանց ու Գադեանց
13 տուի. Ու Գաղաադին մնացածը՝
ու բոլոր Բասանը՝ այսինքն Ովգին
թագաւորութիւնը՝ ու բոլոր Ար֊
գովբի գաւառը՝ բոլոր Բասանին
հետ՝ որ Հսկայից երկիր կ'ըսուէր,
14 Մանասէի կէս ցեղին տուի։ Ե֊
Մանասեան Յայիրը բոլոր Արգով֊
բի գաւառը առաւ՝ մինչև Գեսու֊
րացւոց ու Մաքաթացւոց սահմա֊
նը, ու անոնք իր անունովը մինչև
այսօր ‡Բասան Հաւօթ յայիր" կո֊
15 չեց։ Այսպէս՝ Գաղաադը Մա֊
16 քիրին տուի։ Եւ Գաղաադէն
մինչև Առնոն ձորը՝ (այսինքն ձորին
մէջտեղը՝ որ սահմանն է,) ու մին֊
չև Ամմոնի որդւոցը սահմանը եղած
Յաբոկ ձորը՝ Ռուբէնեանց ու
17 Գադեանց տուի, Նաև դաշտը Յոր֊
դանանու սահմանովը՝ Կենէրե֊
թէն մինչև դաշտային ծովը՝ այս֊
ինքն մինչև Աղի ծովը, արևելեան
կողմը եղած Ասեդովթ փասգային
տակը։
18 Եւ ան ատենը ձեզի պատուիրե֊
ցի, ու ըսի. Ձեր Տէր Աստուածը
աս երկիրը ձեզի ժառանգութիւն
տուաւ. զօրաւոր դուք ամէնքդ որ
կտրիճներ էք, զէնքերնիդ առէ՛ք,
ու Իսրայէլի որդւոցը՝ ձեր եղբայր֊
19 ներուն առջե՛ւը անցէք. Բայց ձեր
կնիկները՝ ձեր որդիները ու ձեր ա֊
նասունները, (որովհետև ձեր անա֊
սուններուն շատ ըլլալը գիտեմ,)
թող մնան ձեր քաղաքներուն մէջ՝
20 որոնք ես ձեզի տուի, Մինչև որ
Տէրը ձեր եղբայրներն ալ ձեզի պէս
հանգստացընէ, ու մինչև որ անոնք
ալ ժառանգեն ան երկիրը՝ որն որ
ձեր Տէր Աստուածը Յորդանանու
անդիի կողմը անոնց պիտի տայ.
ու ետքը ձեզմէ ամէն մէկը դառ֊
նայ իր ժառանգութեանը՝ որն որ
ես ձեզի տուի։
21 Ան ատենը Յեսուին պատուի֊

Ն. Ք. ԶՖ.
1451

Թու. Ե. 23։
Գլ. Դ. 49։
Ցես. ԺԲ. 5։ ԺԳ. 11։
Ծն. ԺԴ. 5։
Կամ՝ բաղ֊ մութենէն՝
Ամով. Բ. 9։
Բ Թագ. ԺԲ. 26։ Երեմ. ԽԹ. 2։ Եզեկ. ԻԱ. 20։
Գլ. Բ. 36։ Ցես. ԺԲ. 2։
Թու. ԼԲ. 33։ Ցես. ԺԲ. 6։ ԺԴ. Տ, ԵՒ։
Ցես. ԺԳ. 29։
Ա Մն. Բ. 22։
Ցես. ԺԳ. 13։ Բ Թագ. Գ. 3։ Ժ. 6։
Թու. ԼԲ. 41։
‡ Այ՝ Յայիրի գիւղաքա֊ ղաքներուն Բասանը
Թու. ԼԲ. 39։
Թու. ԻԱ. 24։ Ցես. ԺԲ. 2։
Բ Թագ. ԻԴ. 5։
Թու. ԼԴ. 11։
Գլ. Դ. 49։ Թու. ԼԴ. 11։ Ցես. ԺԲ. 3։
Ծն. ԺԴ. 3։
Թու. ԼԲ. 20, ԵՒ։
Ցես. ԻԲ. 4։
Թու. ԻԷ. 18։

Ն. Ք. Ք. 1451

րեցի՝ ըսելով. Քու աչքերդ տեսան
ինչ որ ձեր Տէր Աստուածը աս եր-
կու թագաւորներուն ըրաւ. ա-
նանկ ալ պիտի ընէ Տէրը ան ամէն
թագաւորութիւններուն, *որոնց
22 վրայ դուն պիտի երթաս": Ա-
նոնցմէ չվախնաք. վասն զի ձեր
Տէր Աստուածը ինքը կը պատե-
23 րազմի ձեզի համար: Եւ նան ա-
տենը Տէրոջը աղաչեցի, ու ըսի.
24 Ո՛վ Տէր Եհովայ, դուն սկսեցիր
քու մեծութիւնդ ու քու զօրա-
ւոր ձեռքդ քու ծառայիդ ցուցը-
նելու. վասն զի երկինքին մէջ
կամ երկրիս վրայ ո՛վ է ան աս-
տուածը, որ քու գործքերուդ ու
քու զօրութեանդ պէս գործ մը ը-
25 նելու կարող ըլլայ: Շնո՛րհք ըրէ
որ անցնիմ, ու Յորդանանու մէ-
կալ կողմի բարի երկիրը, ան բարի
լեռը ու Լիբանանը տեսնեմ:
26 Բայց Տէրը ձեր պատճառովը ին-
ծի սրդողելով՝ իմ խնդիրքս չըն-
դունեց. և Տէրը ինծի ըսաւ. Ալ
հերիք է քեզի. մէյմըն ալ աս բա-
27 նը ինծի չըրուցես. Փասգային
գագաթը ելիր, ու դէպ 'ի արև-
մուտք, հիւսիս, հարաւ ու արևելք
աչքերդ վերցո՛ւր, ու քու աչքերովդ
դիտէ. քանզի դուն աս Յորդա-
28 նանէն պիտի չանցնիս: Ու Յե-
սուին պատուէր տալով՝ անիկայ
զօրացո՛ւր, ու անոր սիրտ տուր.
քանզի անիկայ պիտի անցնի աս
ժողովուրդին առջևը, և քու դի-
տելու երկիրդ անիկայ պիտի ժա-
29 ռանգեցընէ անոնց: Ուստի մենք
Հովիտին մէջը՝ Բեթփեգովրի դի-
մացը նստանք:

## ԳԼ. Դ

1 Մովսէս Աստուծոյ հնազանդելու կը յորդորէ Իսրայէլացիները. 41 ու Յորդանանու անդիի կողմը երեք ապաստանի քաղաք կը զատէ:

1 Եւ հիմա ո՛վ Իսրայէլ՝ իմ քեզի
սորվեցուցած կանոններս ու դա-
տաստաններս մտիկ ըրէ, որ զանոնք
ընելով՝ ողջ մնաք, ու մտնէք ժա-
ռանգէք ան երկիրը՝ որն որ ձեր
հայրերուն Տէր Աստուածը ձեզի կու
2 տայ: Ձեզի պատուիրած խօսքիս
վրայ բան մը չաւելցընէք, ու անկէ
բան մը չպակսեցընէք, այլ ձեր
Տէր Աստուծոյն պատուիրանքները
պահէք, որոնք ես ձեզի կը պա-
3 տուիրեմ: Ձեր աչքերը տեսան
ինչ որ Տէրը Բելփեգովրին ըրաւ.
վասն զի քու Տէր Աստուածդ՝ Բել-
փեգովրին ետևէն գացող բոլոր
մարդիկները ձեր մէջէն կորսընցուց:
4 Բայց դուք որ ձեր Տէր Աստուծոյն
յարեցաք, ամէնքդ այսօր ողջ էք:
5 Ահա ձեզի կանոններ ու դատաս-
տաններ սորվեցուցի, ինչպէս որ իմ
Տէր Աստուածս ինծի պատուիրեց,
որ զանոնք 'ի գործ դնէք ան երկրին
մէջ, ուր որ պիտի մտնէք ժառան-
6 գելու համար: Ուստի դուք զանոնք
պահեցէք ու ըրէք. վասն զի ձեր
իմաստութիւնը ու հանճարը աս
պիտի ըլլայ ազգաց առջևը, որոնք
աս բոլոր կանոնները լսելով՝ պիտի
ըսեն. Իրաւցընէ աս մեծ ազգը՝
իմաստուն ու հանճարեղ ժողովուրդ
7 մըն է: Քանզի ո՞ր ազգը այնչափ
մեծ է, որ իր աստուածները իրեն
մօտ ըլլան, ինչպէս որ մեր Եհովայ
Աստուածը մեզի մօտ է ամէն բանի
8 մէջ՝ որ անկէ կը խնդրենք: Ու
ո՞ր ազգը այնչափ մեծ է՝ որ իմ
այսօր ձեր առջևը դրած աս բոլոր
օրէնքիս նման՝ արդար կանոններ ու
9 դատաստաններ ունենայ: Միայն
քեզ աղէկ նայէ, ու քու հոգւոյդ
շատ զգուշութիւն ըրէ, որ չըլլայ
թէ աչքերուդ տեսած բաները մոռ-
նաս, և չըլլայ թէ՝ կենացդ բոլոր
օրերուն մէջ քու սրտէդ ելլեն. այլ
զանոնք քու որդիներուդ, ու որ-
դւոցդ որդիներուն սորվեցընես:
10 Ան օրը՝ որ դուն Քորեբը քու Տէր
Աստուծոյդ առջևը կեցեր էիր, Տէ-
րը ինծի ըսաւ. Ժողովուրդը ինծի
ժողվէ, ու իմ խօսքերս լսել պիտի
տամ անոնց. որպէս զի սորվին
ինծմէ վախնալը՝ որչափ օրեր որ
երկրի վրայ պիտի ապրին, ու իրենց
11 որդիներուն ալ սորվեցընեն: Եւ
դուք մօտենալով՝ լեռանը տակը
կայնեցաք. ու լեռը՝ խաւարով,
ամպով ու մառախուղով ծած-
կուած, մինչև երկինքը" կրակով
12 կը բորբոքէր: Եւ Տէրը կրակին
մէջէն ձեզի խօսեցաւ. դուք անոր
խօսքերուն ձայնը լսեցիք. ու նմա-
նութիւն մը չտեսաք, բայց միայն
13 ձայն լսեցիք: Եւ իր ուխտը տասը
պատուիրանքները ձեզի իմացուց,
ու պատուիրեց որ անոնք ընէք. և
զանոնք երկու հատ քարէ տախ-
14 տակներու վրայ գրեց: Եւ նան
ատենը Տէրը ինծի պատուիրեց, որ
ձեզի կանոններ ու դատաստաններ
սորվեցընեմ, որ զանոնք 'ի գործ
դնէք ան երկրին մէջ, ուր որ պիտի
մտնէք ժառանգելու համար:
15 Ուրեմն ձեր հոգիներուն աղէկ
զգուշութիւն ըրէք. որովհետև ան
օրը՝ որ Տէրը Քորեբ լեռը կրակին
մէջէն ձեզի խօսեցաւ, բնաւ նմա-
16 նութիւն մը չտեսաք: Չըլլայ որ
անօրինիք՝ ու ձեզի կուռք մը
կամ որ և իցէ բանի պատկերը՝ թէ
արուի և թէ էգի նմանութիւնը,
17 կամ երկրի վրայ եղող անասունի
մը նմանութիւնը, կամ օդին մէջ

Ն. Ք. Ք. 1451

* Եբր. որ դուն հոն կ'անցնիս.
Ել. ժդ. 14: Գլ. ա. 30: ի. 4:
Գլ. ժա. 2:
Ել. ժե. 11: Բ Թագ. է. 22: Սաղ. հա. 19: ձզ. 8: ձթ. 6, 8:
Ել. գ. 8: Գլ. ը. 22:
Թուոց. ի. 12: իէ. 14: Գլ. ա. 37: լա. 2: լբ. 51, 52: լդ. 4: Սաղ. ճզ. 32:
Թուոց. իէ. 12:
Թուոց. իէ. 18, 23: Գլ. ա. 38: լա. 3, 7:
Գլ. գ. 46: լդ. 6:
Ղևտ. ժթ. 37: ի. 8: իբ. 31: Գլ. ե. 1: ը. 1: Եզեկ. ի. 11: Հռով. ժ. 5:
Գլ. ժբ. 32: Յեսու. ա. 7: Առակ. լ. 6: Յայտ. իբ. 18, 19:
Թուոց. իե. 4, 9: Յեսու. իբ. 17: Սաղ. ճզ. 28, 29:
Յոբ. իը. 28: Սաղ. ժթ. 7: ճժա. 10: Առակ. ա. 7:
Բ Թագ. է. 23:
Սաղ. խզ. 1: ճխե. 18: ճխը. 14: Եսայ. ծե. 6:
Առակ. դ. 23:
Առակ. գ. 1, 3: դ. 21:
Ծնն. ժը. 19: Գլ. զ. 7: ժա. 19: Սաղ. հը. 5, 6: Եփես. զ. 4:
Ել. ժթ. 9, 16: ի. 18: Եբր. ժբ. 18, 19:
Ել. ժթ. 18: Գլ. ե. 23:
† Եբր. մինչև երկնքին սիրտը.
Գլ. ե. 4, 22:
Հմր. 33, 36:
Ել. ի. 22:
Գ Թագ. ժթ. 12:
Գլ. թ. 9, 11:
Ել. լդ. 28:
Ել. իդ. 12: լա. 18:
Ել. իա. 1: Գլ. իբ. իգ:
Յեսու. իգ. 11:
Ես. խ. 18:
Ել. լբ. 7:
Ել. ի. 4, 5: Հռովմ. 23: Գլ. ե. 8:
Հռով. ա. 23:

Ն. Ք. ՂԾ.
1451

թռչող թեւաւոր թռչունի մը նը-
18 մանութիւնը, կամ երկրի վրայ սո-
ղացող սողունի մը նմանութիւնը,
կամ երկրին տակը՝ ջուրերու մէջ
եղող ձուկի մը նմանութիւնը չի-
19 նէք։ Նաև չըլլայ որ՝ աչքերդ
երկինքը վերցնելով, ու արևը
կամ լուսինը կամ աստղերը, ու
երկինքին բոլոր զարդը տեսնելով՝
խաբուիս, ու անոնց երկրպագու-
թիւն ընես, և անոնք պաշտես.
որովհետև քու Տէր Աստուածդ՝
զանոնք բոլոր երկինքին տակը ե-
ղող ազգերուն համար կարգաւորեց։
20 Բայց Տէրը ձեզ առաւ, ու ձեզ
երկաթի հնոցէն՝ Եգիպտոսէն
հանեց, որ իրեն սեպհական ժո-
ղովուրդ ըլլաք, ինչպէս որ այսօր
եղած է։
21 Եւ Տէրը ձեր պատճառաւը ին-
ծի սրդողելով՝ երդում ըրաւ, որ
Յորդանանէն չանցնիմ, ու չմտնեմ
այն բարի երկիրը՝ որն որ քու Տէր
Աստուածդ քեզի կու տայ ժա-
22 ռանգելու համար։ Արդ՝ ես աս
երկրիս մէջ պիտի մեռնիմ. ու
Յորդանանէն պիտի չանցնիմ.
բայց դուք պիտի անցնիք, ու այն
բարի երկիրը պիտի ժառանգէք։
23 Զգոյշ կեցէք, չըլլայ որ՝ ձեր Տէր
Աստուծոյն ձեզի հետ ըրած ուխտը
մոռնաք, ու ձեզի կուռք մը՝ կամ
որ և իցէ բանի մը նմանութիւնը
շինէք, որն որ քու Տէր Աստուածդ
24 քեզի արգիլեց։ Քանզի քու Տէր
Աստուածդ մաշող կրակ է. անի-
կայ Նախանձոտ Աստուած է։
25 Երբոր դուք որդիներ՝ ու որդւոց
որդիներ ծնանելու ըլլաք, և այն
երկրին մէջ շատ ատեն նստելու ըլ-
լաք, ու այն ատենը թէ որ անօրի-
նիք, և կուռք մը կամ որ և իցէ
բանի նմանութիւնը շինէք, ու
ձեր Տէր Աստուծոյն առջևը չա-
րութիւն ընէք՝ ու զանիկայ բար-
26 կացնէք, Այսօր երկինքը ու
երկիրը ձեզի վկայ կը բռնեմ, որ
դուք անպատճառ շուտով պիտի
կորսուիք այն երկրէն, որն որ Յոր-
դանանէն անցնելով՝ պիտի ժա-
ռանգէք. այն տեղը կեանքերնիդ
երկար պիտի չըլլայ. այլ բոլո-
27 րովին բնաջինջ պիտի ըլլաք։ Եւ
Տէրը ձեզ ազգերուն մէջը պիտի
ցրուէ. ու նուազ սակաւաթիւ պիտի
մնաք այն ազգերուն մէջը, ուր որ
28 Տէրը ձեզ պիտի քշէ։ Եւ հոն
մարդու ձեռքով շինուած քարէ
ու փայտէ աստուածներ պիտի
պաշտէք, որոնք ոչ կը տեսնեն՝ ոչ
կը լսեն՝ ոչ կ'ուտեն՝ ու ոչ կը հո-
29 տոտան։ Եւ հոն քու Տէր Աս-
տուածդ պիտի փնտռես. ու թէ

ա Գլ. ԺԵ. 3։ Յոբ. ԼԱ. 26, 27։
բ Ծն. Բ. 1։ Դ Թագ. ԺԷ. 16։ ԻԱ. 3։
գ Հռով. Ա. 25։
դ Գ Թագ. Ը. 51։ Երեմ. ԺԱ. 4։
ե Ել. ԺԹ. 5։ Գլ. Թ. 29։ ԼԲ. 9։
զ Թուոց. Ի. 12։ Գլ. Ա. 37։ Գ. 26։
է Տեսութգլու. Ա. 13, 14, 15։
ը Գլ. Գ. 27։
թ Գլ. Գ. 25։
ժ Հմր 9։
ի Հմր 16։ Ել. Ի. 4, 5։
լ Ել. ԻԴ. 17։ Գլ. Թ. 3։ Եսա. ԼԳ. 14։ Եբր. ԺԲ. 29։
խ Ել. Ի. 5։ Գլ. Զ. 15։ Եսա. ԽԲ. 8։
ծ Հմր 16։
կ Դ Թագ. ԺԷ. 17։
հ Գլ. Լ. 18, 19։ Եսա. Ա. 2։ Միք. Զ. 2։
ձ Ղև. ԻԶ. 33։ Գլ. ԻԸ. 62, 64։ Նեեմ. Ա. 8։
ղ Գլ. ԻԸ. 64։ Ա Թագ. ԻԶ. 19։ Երեմ. ԺԶ. 13։
ճ Սաղ. ՃԺԵ. 4, 5։ ՃԼԵ. 15, 16։ Եսա. ԽԴ. 9։ ԽԶ. 7։
մ Ղև. ԻԶ. 39, 40։ Գլ. Լ. 1, 2, 3։ Բ Մն. ԺԵ. 4։ Նեեմ. Ա. 9։ Եսա. ԾԵ. 6, 7։ Երեմ. ԻԹ. 12, 13, 14։

որ զանիկայ բոլոր սրտովդ և բոլոր
հոգիովդ փնտռելու ըլլաս, պիտի
30 գտնես։ Երբոր քու վրադ նեղու-
թիւն գայ, ու աս բոլոր բաները
վերջին օրերը քեզի պատահին, թէ
որ քու Տէր Աստուծոյդ դառնաս,
31 ու անոր խօսքը մտիկ ընես, Քու Տէր
Աստուածդ ողորմած Աստուած
ըլլալուն համար, քեզ պիտի չը-
թողու, ու քեզ չկորսնցնէ. ու
նաև քու հայրերուդ երդում ըրած
ուխտը պիտի չմոռնայ։
32 Արդ՝ քեզմէ առաջ եղած առջի
օրերուն համար, այսինքն՝ Աստուած
մարդը երկրի վրայ ստեղծած օրէն
'ի վեր՝ երկինքին մէկ ծայրէն
մինչև մէկալ ծայրը հարցուր, թէ
արդեօք ասոր պէս մեծ բան մը ե-
ղա՞ծ է, ու ասոր պէս բան մը
33 լսուա՞ծ է։ Արդեօք մէկ ազգ մը՝
կրակին մէջէն խօսող Աստուծոյն
ձայնը՝ քու լսածիդ պէս լսեր ու
34 ողջ մնացե՞ր է. Կամ թէ Աս-
տուած՝ մէկ ազգը ուրիշ ազգի մը
մէջէն իրեն առնելու համար՝ փոր-
ձերով, հրաշքներով, զարմանալի
գործքերով, պատերազմով, զօ-
րաւոր ձեռքով, ու բարձր բա-
զուկով, և մեծ ահարկութիւննե-
րով գալ ուզե՞ր է, ինչպէս որ ձեր
Տէր Աստուածը՝ Եգիպտոսի մէջ
ձեզի համար աս բոլոր բաները ըրաւ
35 ձեր աչքերուն առջևը։ Անիկայ
քեզի ցուցուեցաւ, որ գիտնաս թէ
Եհովան ինքը միայն Աստուած է.
անկէ ուրիշ Աստուած չկայ։
36 Քեզ խրատելու համար՝ իր ձայնը
երկինքէն լսել տուաւ քեզի. ու
երկրի վրայ իր մեծ կրակը քեզի
ցուցուց. ու անոր խօսքերը կրա-
37 կին մէջէն լսեցիր։ Եւ քու հայ-
րերդ սիրելուն համար՝ անոնցմէ
ետքը անոնց սերունդը ընտրեց, ու
իր ներկայութեամբը մեծ զօրու-
թիւնով քեզ Եգիպտոսէն հանեց.
38 Որպէս զի քեզմէ մեծ ու զօրաւոր
ազգերը քու առջևէդ վռնտէ. ու
քեզ տանի՝ անոնց երկիրը քեզի
ժառանգութիւն տալու, ինչպէս
39 որ այսօր կը տեսնուի։ Եւ այսօր
գիտցիր, ու սրտիդ մէջը դիր. որ
վերը երկինքին մէջ՝ ու վարը երկ-
րիս վրայ Եհովան ինքը միայն Աս-
40 տուած է, ուրիշ մը չկայ։ Ուս-
տի անոր կանոնները ու պատուի-
րանքները պահես, որոնք ես այսօր
քեզի կը պատուիրեմ, որ քեզի՝ ու
քեզմէ ետքը քու որդւոցդ աղէկ
ըլլայ. ու նաև քու օրերդ երկար
ըլլան այն երկրին վրայ՝ որն որ քու
Տէր Աստուածդ քեզի կու տայ մըշ-
տընջենապէս.
41 Այն ատենը Մովսէս Յորդանանու

Ն. Ք. ՂԾ.
1451

յ Ծն. ԽԹ. 1։ Գլ. ԼԱ. 29։ Երեմ. ԻԳ. 20։ Ովս. Գ. 5։
ն Յովէլ Բ. 12։
շ Բ Մն. Լ. 9։ Նեեմ. Թ. 31։ Սաղ. ՃԺԶ. 5։ Յովն. Դ. 2։
ո Յոբ. Ը. 8։
չ Մատ. ԻԴ. 31։
պ Ել. ԻԴ. 11։ ԻԴ. 20։ Գլ. Ե. 24, 26։
ջ Գլ. Է. 19։ ԻԹ. 3։
ռ Ել. Է. 3։
ս Ել. ԺԳ. 3։
վ Ել. Զ. 6։
տ Գլ. ԻԶ. 8։ ԼԴ. 12։
ր Եբր. փորձե՞ր
ց Գլ. ԼԲ. 39։ Ա Թագ. Բ. 2։ Եսա. ԽԵ. 5, 18, 22։ Մար. ԺԲ. 29, 32։
ւ Ել. ԺԹ. 9, 19։ Ի. 18, 22։ ԻԴ. 16։ Եբր. ԺԲ. 18։
փ Գլ. Ժ. 15։
ք Ել. ԺԳ. 3, 9, 14։
օ Գլ. Է. 1։ Թ. 1, 4, 5։
ֆ Հմր 35։ Յես. Բ. 11։
Ղև. ԻԲ. 31։
Գլ. Ե. 16։ Զ. 3, 18։ ԺԲ. 25, 28։ ԻԲ. 7։ Եփե. Զ. 3։

Ն. Ք. ՂՖ. 1451

Տես Թու. լե. 6, 14։ Գլ. ժթ. 4։ Յես. ի. 8։ Գլ. գ. 29։ Թու. իա. 24։ Գլ. ա. 4։ Թու. իա. 33։ Գլ. գ. 3, 4։ Գլ. բ. 36։ գ. 12։ Գլ. գ. 9։ Սաղ. ճլգ. 3։ Գլ. գ. 17։

ափի կողմը դէպ 'ի արևելք՝ երեք
42 քաղաք զատեց ․ Որպէս զի երէկուընէ ու մէկալ օրուընէ ատելութիւն չունեցող , ու անգիտութեամբ իր դրացին մեռցընող մարդասպանը հոն փախչի ․ ու աս քաղաքներուն մէկուն մէջ փախչելով՝
43 ողջ մնայ ։ Ռուբէնեանց համար՝
դաշտային երկրի վրայ՝ անապատին
մէջ Բոսորը , և Գադեանց համար՝
Գաղաադին մէջ Ռամովթը , ու
Մանասեանց համար՝ Բասանին մէջ
Գովղանը զատեց ։
44 Ասիկայ է այն օրէնքը՝ որ Մովսէս
45 Իսրայէլի որդւոց առջևը դրաւ ։ Ասոնք են այն վկայութիւնները ,
կանոնները և դատաստանները , որոնք որ Մովսէս Իսրայէլի որդւոցը
խօսեցաւ՝ անոնց Եգիպտոսէն ելած
46 ատենը , Յորդանանու ափի կողմը՝ Բեթփեգովրին դիմացի հովիտին մէջ՝ Եսեբոնի մէջ բնակող
Ամորհացւոց Սեհոն թագաւորին
երկրին մէջը՝ որ Մովսէս ու Իսրայէլի որդիքը զարկին՝ իրենց Ե
47 գիպտոսէն ելած ատենը , Եւ անոր
երկիրը՝ ու Բասանի Ովգ թագաւորին երկիրը՝ որ էին Յորդանանու ափին արևելեան կողմը
բնակող Ամորհացւոց երկու թա
48 գաւորներուն երկիրները , Առնոն
ձորին եզերքը եղող Արոերէն մինչև
Սիոն լեռը՝ որ Հերմոն կ'ըսուի ,
49 Ու Յորդանանու ափին՝ արևելեան
կողմը եղած բոլոր դաշտը՝ մինչև
Ասեդովթ Փասգային ներքևը դաշտի ծովուն քովը ժառանգեցին ։

## ԳԼ . Ե

1 Քորեբի մէջ եղած ուխտը ։ 6 Տասը պատուիրանքները ։ 22 Ժողովուրդին աղաչանքին վրայ՝ Մովսէս Աստուծմէ օրէնքը կ'ընդունի ։

Ել. ժթ. 5։ Գլ. դ. 23։ Տես Մատ. ժգ. 17։ Եբր. ը. 9։

1491

Ել. ժթ. 9, 19։ ի. 22։ Գլ. դ. 33, 36։ լդ. 10։ Ել. ի. 21։ Գաղ. գ. 19։ Ել. ժթ. 16։ ի. 18։ իդ. 2։ Ել. ի. 2։ ... Ղև. իզ. 1։ Գլ. զ. 4։ Սաղ. ձա. 10։

1 Ու Մովսէս բոլոր Իսրայէլը կանչեց , ու անոնց ըսաւ ․ Լսէ՛ ով
Իսրայէլ աս կանոնները ու դատաստանները՝ որոնք ես այսօր ձեր
ականջներուն կը խօսիմ ․ սորվեցէ՛ք
անոնք և զգուշութեամբ 'ի գործ
2 դրէք ։ Մեր Տէր Աստուածը Քորեբի վրայ մեզի հետ ուխտ ըրաւ ,
3 Տէրը աս ուխտը մեր հայրերուն
հետ չըրաւ , հապա մեզի հետ , որ
մենք ամէնքս այսօր հոս ողջ ենք ։
4 Տէրը լեռանը վրայ կրակին մէջէն
ձեզի հետ դէմ առ դէմ խօսեցաւ ․
5 ( Ու ես այն ատենը՝ Տէրոջը ու
ձեր մէջը կայնեցայ , որ Տէրոջը
խօսքերը ձեզի պատմեմ ․ վասն զի
դուք կրակէն վախնալով՝ լեռը
չելաք ․ ) և ըսաւ ․
6 Ես եմ Եհովայ քու Աստուածդ՝
որ քեզ Եգիպտոսի երկրէն՝ ծառայութեան տունէն հանեցի ։
7 Իմ առջևս ուրիշ աստուածներ
չունենաս ։
8 Դուն քեզի կուռք չշինես , ոչ
ալ վերը երկինքի մէջ՝ կամ վարը
երկրի վրայ՝ կամ երկրին տակի
ջուրերուն մէջ եղած բաներուն մէկ
9 նմանութիւնը ․ Անոնց երկրպագութիւն չընես , ու զանոնք չըպաշտես ․ ինչու որ ես քու Տէր
Աստուածդ՝ նախանձոտ Աստուած
եմ , որ կը հատուցանեմ հայրերուն անօրէնութիւնը որդւոցը վըրայ՝ մինչև անոնց երրորդ ու չոր
10 րորդ ազգը՝ որ կ'ատեն զիս ․ Եւ
կ'ողորմիմ անոնց մինչև հազար ազգը՝ որ կը սիրեն զիս , ու իմ պատուիրանքներս կը պահեն ։
11 Տէրոջը քու Աստուծոյդ անունը
պարապ տեղը բերանդ չառնես ․
ինչու որ Տէրը՝ իր անունը պարապ
տեղը բերան առնողը՝ անմեղ պիտի
չսեպէ ։
12 Հանգստութեան օրը զգուշութիւն ըրէ սուրբ պահելու , ինչպէս
որ քու Տէր Աստուածդ քեզի պա
13 տուիրեց ։ Վեց օր պիտի աշխա
14 տիս , ու բոլոր գործքդ ընես ․ Բայց
եօթներորդ օրը՝ Տէրոջը քու Աստուծոյդ հանգստութեան օրն է ․
այն օրը գործ մը պիտի չգործես , ոչ
դուն՝ ոչ քու որդիդ՝ ոչ քու աղջիկդ՝ ոչ քու ծառայդ ու աղախինդ՝ ոչ քու եզդ ու էշդ՝ ոչ քու
ամէն անասունդ , ոչ ալ քու դռներուդ մէջ եղած օտարականդ , որ
քու ծառայդ ու աղախինդ ալ քեզի
15 պէս հանգստանայ ․ Եւ մի՛տքդ
բերես , որ դուն Եգիպտոսի երկրին
մէջ ծառայ էիր , ու քու Տէր Աստուածդ՝ զօրաւոր ձեռքով ու
բարձր բազուկով քեզ անկէ հանեց ․ անոր համար քու Տէր Աստուածդ քեզի պատուիրեց որ
հանգստութեան օրը պահես ։
16 Պատուէ՛ քու հայրդ ու մայրդ ,
ինչպէս որ քու Տէր Աստուածդ քեզի պատուիրեց , որ քու օրերդ
երկար ըլլան , ու քեզի աղէկ ըլլայ
այն երկրին վրայ , որն որ քու Տէր
Աստուածդ քեզի կու տայ ։
17 Սպանութիւն մի՛ ըներ ։
18 Ու շնութիւն մի՛ ըներ ։
19 Եւ գողութիւն մի՛ ըներ ։
20 Ու քու դրացիիդ դէմ սուտ
վկայութիւն մի՛ ըներ ։
21 Եւ քու դրացիիդ կնկանը մի՛
ցանկար ․ ու քու դրացիիդ տանը՝
կամ անոր արտին՝ կամ անոր ծառային՝ կամ անոր աղախինին՝ կամ
անոր եզին՝ կամ անոր իշուն՝ և քու
դրացիիդ ամենևին մէկ բանին մի՛
ցանկար ։
22 Տէրը աս խօսքերը լեռանը վրայ ,

Ն. Ք. ՂՖ. 1451

Ել. ի. 3։ Ել. ի. 4։ Ել. լդ. 7։ Երեմ. լբ. 18։ Դան. թ. 4։ Ել. ի. 7։ Ղև. ժթ. 12։ Մատ. ե. 33։ Ել. ի. 8։ Ել. իգ. 12։ լե. 2։ Եզեկ. ի. 12։ Ծն. բ. 2։ Ել. ժզ. 29, 30։ Եբր. դ. 4։ Գլ. ժե. 15։ ժզ. 12։ իդ. 18, 22։ Գլ. դ. 34, 37։ Ել. ի. 12։ Ղև. ժթ. 3։ Գլ. իէ. 16։ Եփե. զ. 2, 3։ Կող. գ. 20։ Գլ. դ. 40։ Ել. ի. 13։ Մատ. ե. 21։ Ել. ի. 14։ Ղուկ. ժը. 20։ Յակ. բ. 11։ Ել. ի. 15։ Հռով. ժգ. 9։ Ել. ի. 16։ Ել. ի. 17։ Միք. բ. 2։ Ամբ. բ. 9։ Ղուկ. ժբ. 15։ Հռով. է. 7։ ժգ. 9։

Ն. Ք. ԴՐ. 1451

կրակին՝ ամպին ու մառախուղին
մէջէն բարձր ձայնով ձեր բոլոր
ժողովքին ըրաւ, և ուրիշ բան
չաւելցուց. ու երկու հատ քարէ
տախտակի վրայ գրեց զանոնք, ու
23 ինծի տուաւ։ Եւ երբ լեռանը կրա-
կով վառած ատենը՝ երբոր խաւա-
րին մէջէն անոր ձայնը լսեցիք, իմ
քովս եկաք դուք, այսինքն ձեր ցե-
ղերուն բոլոր գլխաւորները և ձեր
24 ծերերը, ու ըսիք. Ահա մեր Տէր
Աստուածը՝ իր փառքը ու մեծու-
թիւնը մեզի ցուցուց, ու անոր
ձայնը կրակին մէջէն լսեցինք. այ-
սօր տեսանք որ Աստուած մարդու
հետ խօսեցաւ, ու մարդը ողջ
25 մնաց։ Եւ հիմա մենք ինչո՞ւ մեռ-
նինք. (քանզի այս մեծ կրակը մեզ
պիտի սպառէ.) թէ որ մենք մեր
Տէր Աստուծոյն ձայնը մէյմըն ալ
լսելու ըլլանք, պիտի մեռնինք։
26 Վասն զի բոլոր մարմիններէն ո՞վ է որ
կրակի մէջէն խօսող կենդանի Աս-
տուծոյն ձայնը մեզի պէս լսեց, ու
27 ողջ մնաց։ Դուն մօտեցիր, և մեր
Տէր Աստուծոյն բոլոր ըսելու խօսքե-
րը լսէ, ու մեր Տէր Աստուածը
քեզի հետ ինչ որ խօսի, դուն մե-
զի ըսէ. մենք մտիկ կ'ընենք ու կը
28 կատարենք։ Եւ Տէրը ձեր խօս-
քերուն ձայնը լսեց, երբոր դուք
ինծի կը խօսէիք, ու Տէրը ինծի
ըսաւ. Այս ժողովուրդին քեզի ը-
սած խօսքերուն ձայնը լսեցի. ա-
29 նոնց ամէն ըսածը շիտակ է։ Ե-
րանի թէ անոնց սիրտն ալ անանկ
ըլլար, որ ինծմէ վախնալով՝ իմ
բոլոր պատուիրանքներս միշտ պա-
հէին, որ իրենց աղէկ ըլլար՝ ու
իրենց որդւոցն ալ յաւիտեան։
30 Գնա անոնց ըսէ. Դուք ձեր վրան-
31 ները դարձէք։ Բայց դուն հոս
իմ հետս կեցիր, ու բոլոր անոնց
սորվեցնելու պատուիրանքներս,
կանոններս ու դատաստաններս
քեզի ըսեմ, որ զանոնք կատարեն
այն երկրին մէջը՝ որն որ ես անոնց
կու տամ ժառանգութեան համար։
32 Արդ զգոյշ եղէք ձեր Տէր Աս-
տուծոյն ձեզի պատուիրածին պէս
ընելու, աջ դին կամ ձախ դին
33 չխոտորիք։ Ձեր Տէր Աստուծոյն
ձեզի պատուիրած բոլոր ճամբանե-
րուն մէջը քալեցէք որ ապրիք ու
ձեզի աղէկ ըլլայ և ձեր ժառանգե-
լու երկրին մէջ երկայնակեաց ըլլաք։

## ԳԼ. Զ

1 Մովսէս կը սորվեցնէ թէ օրէնքին լրումը հնազանդութիւնն է. 3 ու կը յորդորէ հնազանդիլ։

1 Եւ ասոնք են այն պատուիրանք-
ները, կանոնները ու դատաս-
տանները, որ ձեր Տէր Աստուածը
ինծի պատուիրեց ձեզի սորվեցնե-
լու համար, որ ձեր մտնելու ու
ժառանգելու երկրին մէջ ՚ի գործ
2 դնէք զանոնք. Որպէս զի քու Տէր
Աստուծմէդ վախնաս, ու անոր ա-
մէն կանոնները ու պատուիրանք-
ները՝ որ ես քեզի կը պատուիրեմ,
քու կենացդ բոլոր օրերուն մէջ
պահես, թէ դուն, թէ քու որդիդ
և թէ քու որդւոյդ որդին, որ
3 քու օրերդ երկար ըլլան։ Արդ՝ ով
Իսրայէլ, մտիկ ըրէ. ու զգուշու-
թիւն ըրէ զանոնք կատարելու, որ
քեզի աղէկ ըլլայ, և կաթ ու մեղր
բղխող երկրին վրայ խիստ շատ-
նաս, ինչպէս որ քու հայրերուդ
Տէր Աստուածը քեզի խոստացաւ։
4 Ո՛վ Իսրայէլ, մտիկ ըրէ. մեր
Տէր Աստուածը *մի միայն՝ Տէր է։
5 Ու քու Տէր Աստուածդ՝ բոլոր
սրտովդ, բոլոր հոգիովդ ու բոլոր
6 զօրութիւնովդ սիրես։ Եւ այս
խօսքերը՝ որ ես այսօր քեզի պա-
տուիրեցի, քու սրտիդ մէջը ըլլան.
7 Ու զանոնք քու որդւոցդ կրկին և
կրկին անգամ սորվեցնես, և թէ
տանդ մէջ նստած ատենդ, թէ
ճամբայ գացած ատենդ, և թէ
պառկելու ու ելլելու ատենդ անոնց
8 վրայով խօսիս. Եւ զանոնք նշա-
նի համար ձեռքիդ վրայ կապես,
ու ճակատնոցի համար աչքերուդ
9 մէջտեղը ըլլան. Նաև անոնք քու
տուներուդ դրանդեաց վրայ՝ և
դռներուդ վրայ գրես։
10 Ու երբոր քու Տէր Աստուածդ
քեզ տանի այն երկիրը՝ որուն հա-
մար քու հայրերուդ՝ Աբրահամին,
Իսահակին ու Յակոբին երդում
ըրաւ, որ քեզի մեծ ու գեղեցիկ
քաղաքներ տայ, որոնք դուն շի-
11 նած չես, Եւ ամէն բարիքներով
լցուած տուներ, որոնք դուն լե-
ցուցած չես, ու փորուած ջրհոր-
ներ որոնք դուն փորած չես, այ-
գիներ ու ձիթենիներ որոնք դուն
տնկած չես. ու երբոր ուտես ու
12 կշտանաս, Զգոյշ կեցիր որ չըլլայ
թէ քեզ Եգիպտոսի երկրէն ծա-
ռայութեան տունէն հանող Տէրը
13 մոռնաս։ Քու Տէր Աստուծմէդ
վախնաս ու զանիկայ պաշտես և
անոր անունովը երդում ընես։
14 Օտար աստուածներուն՝ ձեր բո-
լորտիքը եղող ժողովրդոց աս-
տուածներուն ետևէն չերթաք.
15 (Վասն զի քու Տէր Աստուածդ որ
քու մէջտեղդ է՝ նախանձոտ Աս-
տուած է.) Չըլլայ որ քու Տէր
Աստուծոյդ բարկութիւնը քու վը-
րադ բորբոքի, ու քեզ երկրի երե-
սէն բնաջինջ ընէ։

ա Ել. իդ. 12։ Ղւ. 18։ Գր. գ. 13։
բ Ել. ի. 18, 19։
գ Ել. ժթ. 19։
դ Գլ. դ. 33։ Դատ. ժգ. 22։
ե Գլ. ժը. 16։
զ Գլ. դ. 33։
է Ել. ի. 19։ Եբր. ժբ. 19։
ը Գլ. ժը. 17։
թ Գլ. լբ. 29։ Սաղ. ձա. 13։ Ես. խը. 18։ Մատ. իգ. 37։ Ղուկ. ժթ. 42։
ժ Գլ. ժա. 1։
ի Գլ. դ. 40։
լ Գաղ. գ. 19։
խ Գլ. ժէ. 20։ Իը. 14։ Յես. ա. 7։ Իգ. 6։ Առակ. դ. 27։
ծ Գլ. ժ. 12։ Սաղ. ճժթ. 6։ Երեմ. է. 23։ Ղուկ. ա. 6։
կ Գլ. դ. 40։
ա Գլ. դ. 1. ե. 31։ ժբ. 1։

Ն. Ք. ԴՐ. 1451

բ Ել. ի. 20։ Գլ. ժ. 12, 13։ Սաղ. ճժա. 10։ Ճիը. 1։ Ժող. ժբ. 13։
գ Գլ. դ. 40։ Առակ. գ. 1, 2։
դ Ել. գ. 8։ Ի Ծն. ժե. 5։ Իբ. 17։
ե Ես. խբ. 8։ Մար. ժբ. 29, 32։ Յովհ. ժէ. 3։ Ա Կոր. ը. 4, 6։
* Եբր. մէկ
զ Գլ. ժ. 12։ Մատ. իբ. 37։ Մար. ժբ. 30։ Ղուկ. ժ. 27։
է Դ Թագ. իգ. 25։
ը Գլ. ժա. 18։ լբ. 46։ Սաղ. լէ. 31։ խ. 8։ ճժթ. 11, 98։ Առակ. գ. 3։ Ես. ծա. 7։
թ Գլ. դ. 9։ ժա. 19։ Սաղ. Հը. 4, 5, 6։ Եփե. զ. 4։
ժ Ել. ժգ. 9, 16։ Գլ. ժա. 18։ Առակ. գ. 3։ Զ. 21։ Է. 3։
ի Գլ. ժա. 20։ Ես. ծէ. 8։
լ Յես. իդ. 13։ Սաղ. Հե. 44։
խ Գլ. ը. 10։ Ճ.։
ծ Գլ. ժ. 12, 20։ Ժգ. 4։ Մատ. դ. 10։ Ղուկ. դ. 8։
կ Սաղ. կդ. 11։ Ես. խե. 23։ կե. 16։ Երեմ. դ. 2։ ե. 7։ ժբ. 16։
հ Գլ. ը. 19։ ժա. 28։ Երեմ. իե. 6։
ձ Գլ. ժդ. 7։
ղ Ել. ի. 5։ Գլ. դ. 24։
ճ Գլ. է. 4։ ժա. 17։

Ն. փ. զՔ. 1451

16 Ձեր Տէր Աստուածը չփորձէք,
ինչպէս որ Մասսայի մէջ փոր-
17 ձեցիք ։ Ձեր Տէր Աստուծոյն
պատուիրանքները, ու ձեզի պա-
տուիրած վկայութիւնները ու
կանոնները զգուշութեամբ պա-
18 հեցէք ։ Եւ Տէրոջը առջեւը ինչ
որ ուղիղ ու հաճելի է, ան ը-
նես, որ քեզի աղէկ ըլլայ, ու
մտնես ժառանգես ան բարի եր-
կիրը՝ որն որ Տէրը քու հայրերուդ
19 երդում ըրաւ քեզի տալու, Ու քու
ամէն թշնամիներդ քու առջեւէդ
հալածես, ինչպէս որ Տէրը ըսաւ ։
20 Երբոր վաղը քու որդիդ քեզի
հարցընէ՝ ու ըսէ թէ՝ Ի՞նչ պէտք
ըլլան այն վկայութիւնները՝ կանոն-
ները ու դատաստանները, որոնք որ
մեր Տէր Աստուածը ձեզի պատուի-
21 րեց. Ան ատենը քու որդւոյդ պի-
տի ըսես. Մենք Եգիպտոսի մէջ
Փարաւոնին ծառայ էինք, և Տէրը
զօրաւոր ձեռքով մեզ Եգիպտոսէն
22 հանեց. Նաև Տէրը մեր աչքերուն
առջեւը՝ Եգիպտոսի վրայ, Փարա-
ւոնին վրայ ու անոր բոլոր տանը
վրայ՝ մեծ ու սոսկալի նշաններ
23 ու հրաշքներ ըրաւ. Եւ մեզ
անկէ հանեց, որ մեզ տանի, ու
մեր հայրերուն երդումով խոստա-
24 ցած երկիրը տայ մեզի ։ Ուստի
Տէրը մեզի պատուիրեց, որ աս բո-
լոր կանոնները ՚ի գործ դնենք, ու
մեր Տէր Աստուծմէն վախնանք,
որ մեզի աղէկ ըլլայ միշտ, ու ողջ
25 մնանք՝ ինչպէս որ է այսօր ։ Եւ
թէ որ մեր Տէր Աստուծոյն առջեւը՝
աս բոլոր պատուիրանքները զգու-
շութեամբ կատարենք, ինչպէս որ
ինքը մեզի պատուիրեց, մեզի
արդարութիւն պիտի սեպուի ։

ԳԼ. Է

1 Ուրիշ ազգաց հետ հաղորդակցութիւն ընելը կ՚արգիլուի. 4 կռապաշտութենէ ազատ ըլլալու համար. 6 ժողովուրդը սուրբ մնալու համար. 9 քանզի Աստուած ողորմած ու արդար է. 12 և Իսրայէլացւոց պիտի օգնէ անոնց ընելու պատերազմներուն մէջ ։

1 Երբոր քու Տէր Աստուածդ տա-
նի քեզ ան երկիրը, ուր որ պի-
տի մտնես ժառանգելու համար, ու
քու առջեւէդ շատ ազգեր հալածէ,
այսինքն՝ Քետացիները, Գերգեսա-
ցիները, Ամորհացիները, Քանա-
նացիները, Փերեզացիները, Խևա-
ցիները ու Յեբուսացիները, աս
եօթը ազգերը՝ որոնք քեզմէ մեծ
2 ու զօրաւոր են, Ու երբոր քու Տէր
Աստուածդ զանոնք քու ձեռքդ
տայ, զանոնք պիտի զարնես, ու
բոլորովին կորսնցընես. Անոնց
հետ ուխտ չընես, ու անոնց չո-
3 ղորմիս. Ոչ ալ անոնց հետ խնա-
մութիւն ընես. քու աղջիկդ անոր
տղուն չտաս, ու անոր աղջիկը քու
4 տղուդ չառնես. Վասն զի քու տը-
ղաքներդ իմ ծառայութենէս պի-
տի դարձընեն օտար աստուածներ
պաշտելու. Ու Տէրոջը բարկու-
թիւնը ձեր վրայ բորբոքելով՝ ձեզ
5 շուտով պիտի կորսնցընէ ։ Սակայն
անոնց ասանկ ըրէք. Անոնց սեղան-
ները կործանեցէք, անոնց արձաննե-
րը խորտակեցէք, անոնց անտառնե-
րը կտրեցէք, ու անոնց քանդա-
կուած կուռքերը կրակով այրեցէք ։
6 Քանզի դուն քու Տէր Աստուծոյդ
սուրբ ժողովուրդն ես. Քու Տէր
Աստուածդ երկրի երեսին վրայ եղող
բոլոր ազգերուն մէջէն քեզ ընտրեց,
որ դուն անոր սեպհական ժողո-
7 վուրդը ըլլաս ։ Տէրը որ ձեզ սիրեց
ու ընտրեց, ամէն ազգերէն շատուոր
ըլլալնուդ համար չէ, քանզի դուք
8 ամէն ազգերէն քիչուոր էիք. Այլ
Տէրը ձեզ սիրելուն համար, ու
ձեր հայրերուն ըրած երդումը
պահելուն համար, Տէրը ձեզ զօ-
րաւոր ձեռքով ծառայութեան
տունէն հանեց, և Եգիպտացւոց
Փարաւոն թագաւորին ձեռքէն
9 ազատեց ։ Արդ՝ գիտցիր որ քու
Տէր Աստուածդ՝ ինքն է Աստուա-
ծը, հաւատարիմ Աստուածը,
որ զինքը սիրողներուն ու իր պա-
տուիրանքները պահողներուն մինչև
հազար ազգը՝ ուխտ ու ողորմու-
10 թիւն կը պահէ. Եւ զինքը ա-
տողներուն ալ՝ իրենց երեսին դէմ
պատիժը կու տայ, ու զանոնք կը
կորսնցընէ. զինքը ատողին դա-
տելը չուշացըներ, անոր երեսը կու
11 տայ ։ Ուրեմն պահէ դուն ան պա-
տուիրանքները, կանոնները ու
դատաստանները՝ որոնք ես՝ այսօր
քեզի կը պատուիրեմ որ ընես ։
12 Ուստի թէ որ աս դատաստան-
ները լսելով՝ անոնք պահես ու ՚ի
գործ դնես, քու Տէր Աստուածդ
ալ քեզի համար՝ քու հայրերուդ
երդում ըրած ուխտը ու ողորմու-
13 թիւնը պիտի պահէ. Նաև քեզ
պիտի սիրէ, և քեզ օրհնէ, ու քեզ
պիտի շատցընէ. և քու որովայնիդ
պտուղը, քու երկրիդ պտուղը, քու
ցորենդ, քու գինիդ, քու եղդ,
կովերուդ ծնունդը, ու ոչխարնե-
րուդ հօտերը պիտի օրհնէ ան երկ-
րին վրայ՝ որն որ Տէրը քու հայրե-
րուդ երդում ըրաւ քեզի տալու ։
14 Դուն ամէն ազգերէն աւելի օրհնեալ
պիտի ըլլաս. ու ձեր մէջը՝ և ձեր
անասուններուն մէջը՝ թէ արուներ-
րէն և թէ էգերէն ամուլ պիտի
15 չգտնուի ։ Եւ Տէրը ամէն հի-
ւանդութիւնները քեզմէ պիտի

Ն. Ք. ԴՖ. 1451

ՆԵլ. Թ. 14. ԺԵ. 26. Գլ. ԻԸ. 27. 60. Հմր 2.

վերցնէ. ու Եգիպտացւոց
դէշ ցաւերը՝ որոնք դուն գիտես,
բնաւ քու վրադ պիտի չբերէ. այլ
անոնք քու բոլոր թշնամիներուդ
16 վրայ պիտի խրկէ։ Եւ դուն պի-
տի սպառես այն բոլոր ազգերը, ո-
րոնք որ քու Տէր Աստուածդ քու
ձեռքդ պիտի տայ. Քու աչքդ ա-
նոնց չխնայէ. ու անոնց աստուած-
ները չպաշտես, վասն զի անիկա քեզի
17 որոգայթ պիտի ըլլայ։ Թէ որ
սրտիդ մէջը ըսես թէ՝ Այս ազգերը
ինծմէ շատուոր են, ես ինչպէս
18 կրնամ անոնք հալածել. Անոնցմէ
մի՛ վախնար, աղէկ մը յիշէ՛ ինչ
որ քու Տէր Աստուածդ ըրաւ Փա-
րաւոնին՝ ու բոլոր Եգիպտացինե-
19 րուն, Այն մեծամեծ փորձերը՝ ո-
րոնց դուն ականատես եղար, այն
նշանները ու հրաշքները, այն զօ-
րաւոր ձեռքը ու բարձր բազուկը,
որոնցմով քու Տէր Աստուածդ
քեզ հանեց. քու Տէր Աստուածդ
անանկ պիտի ընէ այն բոլոր ազգե-
րուն, որոնցմէ դուն կը վախնաս։
20 Ու նաև քու Տէր Աստուածդ ա-
նոնց վրայ իշամեղու պիտի խրկէ,
որ մնացածները՝ ու քու երեսէդ
21 պահուըտողները կորսուին։ Ա-
նոնց երեսէն մի՛ վախնար. 
քանզի քու Տէր Աստուածդ՝ այն
զօրաւոր ու ահարկու Աստուածը՝
22 ձեր մէջն է։ Եւ քու Տէր Աս-
տուածդ այն ազգերը քու առջեւէդ
կամաց կամաց պիտի վռնտէ.
զանոնք չես կրնար մէկէն հատցնել,
որ չըլլայ թէ դաշտին գազանները
23 վրադ շատնան։ Եւ քու Տէր Աս-
տուածդ զանոնք քու ձեռքդ պիտի
մատնէ, ու զանոնք մեծ կործա-
նումով պիտի կործանէ, մինչև որ
24 ամէնքը բնաջինջ ըլլան։ Նաև ա-
նոնց թագաւորները քու ձեռքդ
պիտի տայ, և անոնց անունները
երկինքին տակէն ոչնչացընես.
ու բնաւ մէկը պիտի չկրնայ քեզի
դէմ կենալ, մինչև որ զանոնք կոր-
25 սընցընես։ Անոնց աստուածներուն
քանդակուած կուռքերը կրակով
այրես. ու անոնց վրայ եղած ոս-
կիին ու արծաթին աչք տնկելով՝
անոնք քեզի չառնես, որ անոնց-
մով որոգայթի չբռնուիս. վասն
զի անոնք քու Տէր Աստուծոյդ
26 առջեւ գարշելի են. Արդ՝ գարշելի
բան մը տունդ մի՛ տանիր, որ դուն
ալ անոր պէս նզովուած չըլլաս. անկէ
բոլորովին զզուիս, ու զանիկայ ար-
համարհես, վասն զի նզովուած է ան։

ԳԼ. Ը

1-20 Մովսէս կը յորդորէ Իսրայէլացիները Աս-
տուծոյ հնազանդելու, անոր բարերարութիւն-
ները յիշելով։

1 Այն պատուիրանքները՝ որ ես
այսօր կը պատուիրեմ ձեզի՝
զգոյշ եղէք որ ընէք, որպէս զի
ապրիք, ու շատնաք, ու մտնէք
ժառանգէք այն երկիրը՝ որն որ
Տէրը ձեր հայրերուն երդումով
2 խոստացաւ։ Ու մի՛տքդ պահէ այն
բոլոր ճամբան, որ քու Տէր Աս-
տուածդ աս քառասուն տարին
քեզ անապատին մէջ պտըտցուց,
քեզ խոնարհեցընելու՝ փորձելու
ու սրտիդ մէջինը իմանալու հա-
մար, թէ արդեօք դուն անոր պա-
տուիրանքները պիտի պահես, թէ
3 չէ։ Եւ Տէրը քեզ խոնարհեցուց,
անօթեցուց, և մանանայով կե-
րակրեց, որն որ ոչ դուն կը ճանչ-
նայիր, և ոչ քու հայրերդ, քեզի
իմացընելու համար՝ թէ ոչ միայն
հացով կ՚ապրի մարդ, հապա մար-
դը Տէրոջը բերնէն ելած ամէն խօս-
4 քով կ՚ապրի։ Աս քառասուն տա-
րին քու վրայէդ լաթերդ չհինցան,
ու ոտքերդ չուռեցան։
5 Եւ սրտիդ մէջը գիտնաս որ
ինչպէս մարդ մը կը խրատէ իր
որդին, քու Տէր Աստուածդ ալ
6 քեզ անանկ կը խրատէ։ Ու-
րեմն քու Տէր Աստուծոյդ պա-
տուիրանքները պահես, անոր ա-
նոր ճամբաներուն մէջը քալես, ու
7 անկէ վախնաս։ Քանզի քու Տէր
Աստուածդ մէկ աղէկ երկիր մը
կը տանի քեզ, անանկ երկիր մը՝
որ դաշտերէ ու լեռներէ բղխող
գետերով՝ աղբիւրներով ու խորունկ
8 ջուրերով լեցուն է. Անանկ երկիր
մը՝ որ ցորենով, գարիով, այգինե-
րով, թզենիներով և նռնենինե-
րով լեցուն է. իւղ տուող ձիթե-
9 նիներու ու մեղրի երկիր. Անանկ
երկիր մը՝ որ հոն *կուշտ հաց պի-
տի ուտես, որ անոր մէջ բնաւ բան
մը պիտի չպակսի քեզի. երկիր մը՝
որուն քարերը երկաթ է, ու անոր
լեռներէն պղինձ պիտի հանես։
10 Ուստի երբոր ուտես ու կշտա-
նաս, քու Տէր Աստուածդ օրհնես,
այն աղէկ երկիրը քեզի տալուն հա-
11 մար։ Քու անհոգ զգուշութիւն
ըրէ, չըլլայ որ քու Տէր Աստուածդ
մոռնաս, ու չպահես անոր պա-
տուիրանքները, դատաստանները
ու կանոնները, որոնք ես այսօր
12 քեզի կը պատուիրեմ։ Ու երբոր
ուտես ու կշտանաս, և գեղեցիկ
տուներ շինես, ու բնակիս անոնց
13 մէջ, Ու երբոր արջառներդ և հօ-
տերդ շատնան, ու նաև արծաթդ
ու ոսկիդ շատնայ, և քու ամէն
14 ունեցածդ շատնայ, Զըլլայ որ
սիրտդ հպարտանայ, և քու Տէր
Աստուածդ մոռնաս, այն որ Եգիպ-

Ն. Ք. ԴՖ. 1451

Գլ. Դ. 1. Ե. 32, 33. Զ. 1, 2, 3.

Գլ. Ա. 3. Բ. 7. ԻԹ. 5. Սաղ. ՃԼԶ. 16. Ամով. Բ. 10.

Ել. ԺԶ. 4. Գլ. ԺԴ. 3.

Բ Մն. ԼԲ. 31. Յօհ. Բ. 25.

Ել. ԺԶ. 2, 3.

Ել. ԺԶ. 12, 14, 35.

Սաղ. ՃԴ. 29. Մատ. Դ. 4. Ղու. Դ. 4.

Գլ. ԻԹ. 5. Նեեմ. Թ. 21.

Բ Թագ. Է. 14. Սաղ. ՁԹ. 32. Առակ. Գ. 12. Եբր. ԺԲ. 5, 6. Յայտ. Գ. 19.

Գլ. Ե. 33.

Գլ. ԺԱ. 10, 11, 12.

* Եբր. առանց յքաւորութեան

Գլ. ԼԳ. 25.

Գլ. Զ. 11, 12.

Գլ. ԻԲ. 47. ԼԲ. 15. Առակ. Լ. 9. Ովս. ԺԳ. 6.

Ա Կոր. Դ. 7.

Սաղ. ՃԶ. 21.

ԶԳլ. ԺԴ. 8. ԺԷ. 13, 21. ԻԵ. 12.

Ել. ԻԳ. 33. Գլ. ԺԲ. 30. Դատ. Ը. 27. Սաղ. ՃԶ. 36.

Գլ. ԼԱ. 6.

Սաղ. ՃԵ. 5.

Գլ. Դ. 34. ԻԹ. 3.

Ել. ԻԳ. 28. Յես. ԻԴ. 12.

Գլ. Ժ. 17. Նեեմ. Ա. 5. Դ. 14. Թ. 32.

Թուոց ԺԱ. 20. ԺԴ. 9, 14, 42. ԺԶ. 3. Յես. Գ. 10.

Ել. ԻԳ. 29, 30.

Հմր 2.

Յես. Ժ. 24, 25, 42. ԺԲ. 1.

Ել. ԺԷ. 14. Գլ. Թ. 14. ԻԵ. 19. ԻԹ. 20.

Գլ. ԺԱ. 25. Յես. Ա. 5. Ժ. 8. ԻԳ. 9.

Հմր 5. Ել. ԼԲ. 20. Գլ. ԺԲ. 3. Ա Մն. ԺԴ. 12.

Յես. Է. 1, 21.

Դատ. Ը. 27.

Գլ. ԺԵ. 1. Ղև. ԻԷ. 28. Գլ. ԺԳ. 17. Յես. Զ. 17, 18. Է. 1.

Ն. Ք. Գ.
1451

յ Թու. իա. 6; Ովս. ժգ. 5;
ն Ես. կգ. 12, 13, 14; Երեմ. բ. 6;
շ Թու. ի. 11; Սաղ. հը. 15; ճժդ. 8;
ո Հմր 3; Ել. ժզ. 15;
չ Երեմ. իդ. 5, 6; Եբր. ժբ. 11;
պ Գլ. Թ. 4; Ա Կոր. դ. 7;
ջ Առակ. ժ. 22; Ովս. բ. 8;
ռ Գլ. է. 8, 12;
ս Գլ. դ. 26; ը. 18;
վ Դան. Թ. 11, 12;

տացւոց երկրէն՝ ծառայութեան
15 տունէն քեզ հանեց, Եւ այն մեծ
ու ահագին, [յ]կիզող օձերով ու
կարիճներով լեցուն, չոր ու անջուր
անապատին մէջ [ն]քեզ պտըտցուց,
[շ]ու քեզի ապառաժ քարէն ջուր
16 հանեց. Եւ անապատին մէջ քու
հայրերուդ չճանչցած [ո]մանանա-
յովը քեզ կերակրեց, որ քեզ խո-
նարհեցընէ ու փորձէ, և [չ]վերջը
17 քեզի բարիք ընէ. [պ]Եւ սրտիդ մէջը
չըսես թէ՝ Աս հարստութիւնը իմ
կարողութեամբս ու իմ ձեռքիս
18 ուժովը վաստըկեցայ. Հապա քու
Տէր Աստուածդ յիշես. [ջ]Քանզի
հարստութիւն ստանալու համար
քեզի ոյժ տուողը ան է. [ռ]որ քու
հայրերուդ իր երդումով ըրած
ուխտը հաստատէ, ինչպէս որ այ-
սօր կը տեսնես:
19 Եւ թէ որ քու Տէր Աստուածդ
մոռնալով՝ ուրիշ աստուածներու
ետևէ երթաս, զանոնք պաշտես,
ու անոնց երկրպագութիւն ընես,
[ս]Ես այսօր ձեզի կը վկայեմ, որ
դուք բոլորովին պիտի կորսուիք՝
20 Այն ազգերուն պէս՝ որ Տէրը ձեր
առջևէն պիտի կորսընցընէ. [վ]Ա-
նանկ պիտի կորսուիք. ինչու որ
ձեր Տէր Աստուծոյն խօսքը մտիկ
չըրիք:

## ԳԼ. Թ

1—29 Մովսէս Իսրայէլացւոց քանի մը ապըս-տամբութիւնները յիշելով՝ կը վերցընէ ա-նոնցմէ ինքզինքնին արդար սեպելու կարծի-քը:

ա Գլ. ժա. 31; Յես. գ. 16; դ. 19;
բ Գլ. դ. 38; է. 1; ժա. 23;
գ Գլ. ա. 28;
դ Թու. ժգ. 23, 29, 33, 34;
ե Գլ. լա. 3; Յես. գ. 11;
զ Գլ. դ. 24; Եբր. ժբ. 29;
է Գլ. է. 23;
ը Ել. իգ. 31; Գլ. է. 24;
թ Գլ. ը. 17; Հռով. ժա. 6, 20; Ա Կոր. դ. 4, 7;
ժ Ծն. ժե. 16; Ղև. ժը. 24, 25; Գլ. ժը. 12;
ի Տիտ. գ. 5;

1 Ո՛վ Իսրայէլ՝ մտիկ ըրէ. [ա]Դուն
այսօր Յորդանանէն կ'անցնիս,
որ երթաս [բ]քեզմէ մեծ ու զօրաւոր
ազգեր, ու [գ]մինչև երկինքը պարըս-
պաւոր մեծ քաղաքներ ժառանգես,
2 Այն մեծ ու երկայնահասակ ազ-
գը՝ [դ]Ենակիմներուն որդիքը՝ որոնք
դուն կը ճանչնաս, ու նաև լսեր ես
թէ՝ Ենակին որդւոցը ո՞վ կրնայ
դէմ դնել:
3 Արդ՝ դուն այսօր գիտցիր, որ
քու Տէր Աստուածդ ինքը [ե]քու
առջևդ կ'անցնի [զ]լափող մաշող կրակ
մը, [է]ու զանոնք պիտի կորսընցը-
նէ, և քու առջևէդ զանոնք պիտի
ոչնչացընէ. [ը]Եւ դուն անոնք պիտի
հալածես, ու շուտով կորսընցը-
նես, ինչպէս որ Տէրը քեզի ըսաւ:
4 Երբոր քու Տէր Աստուածդ զանոնք
քու առջևէդ հալածէ, [թ]սրտիդ
մէջը չըսես թէ՝ Տէրը իմ արդարու-
թեանս համար զիս աս երկիրը բե-
րաւ՝ որ ժառանգեմ. [ժ]Քանզի Տէ-
րը աս ազգերը իրենց անօրէնու-
թեանը համար քու առջևէդ կը
5 վռնտէ: [ի]Չէ՛ թէ քու արդարու-
թեանդ ու սրտիդ ուղղութեանը
համար կը մտնես անոնց երկիրը
ժառանգելու, այլ քու Տէր Աս-
տուածդ ան ազգերուն անօրէնու-
թեանը համար՝ զանոնք քու առ-
ջևէդ կը վռնտէ, և որ հաստատէ
[ժա]ան խօսքը՝ որուն համար քու
հայրերուդ՝ Աբրահամին, Իսահա-
կին ու Յակոբին երդում ըրաւ:
6 Ուստի գիտցիր որ՝ քու արդարու-
թեանդ համար չէ՛ որ քու Տէր Աս-
տուածդ աս բարի երկիրը քեզի
ժառանգել կու տայ. [ժբ]Քանզի դուն
խստապարանոց ժողովուրդ մըն ես:
7 Միտքդ պահէ ու մի՛ մոռնար,
որ դուն քու Տէր Աստուածդ անա-
պատին մէջ բարկացուցիր. [ժգ]Ե-
գիպտոսի երկրէն ելած օրէդ՝ մինչև
հոս եկած օրդ Տէրոջը անհնազանդ
8 եղաք: [ժդ]Քորեբի մէջ ալ Տէրը
բարկացուցիք. և Տէրը ձեզ կոր-
սընցընելու համար՝ ձեզի բարկա-
9 ցաւ: [ժե]Երբոր ես լեռը ելայ, որ
քարեղէն տախտակները առնեմ,
այսինքն՝ Տէրոջը ձեզի հետ ըրած
ուխտին տախտակները, [ժզ]քառասուն
օր ու քառասուն գիշեր լեռը կեցայ.
ոչ հաց կերայ և ոչ ջուր խմեցի.
10 [ժէ]Այն ատենը Տէրը տուաւ ինծի Աս-
տուծոյ մատովը գրուած երկու
քարեղէն տախտակները. ու անոնց
վրայ գրուած էին բոլոր այն խօսքե-
րը, որոնք [ժը]ժողովքին օրը լեռանը
վրայ կրակին մէջէն Տէրը ձեզի ը-
11 րուեց: Արդ՝ քառասուն օրէն ու
քառասուն գիշերէն ետքը՝ Տէրը եր-
կու քարեղէն տախտակները՝ այս-
ինքն ուխտին տախտակները ինծի
12 տուաւ: Եւ Տէրը ինծի ըսաւ.
[ժթ]Ել, ու շուտով ասկէ վա՛ր իջիր.
քանզի քու Եգիպտոսէն հանած
ժողովուրդդ անօրէնութիւն ընե-
լով՝ իմ պատուիրած ճամբայէս
[ի]շուտով խոտորեցան. իրենց ձու-
13 լածոյ կուռք շինեցին: Ու նաև
[իա]Տէրը ինծի հետ խօսելով՝ ըսաւ.
Ես աս ժողովուրդին նայեցայ. և
ահա [իբ]խստապարանոց ժողովուրդ
14 մըն է ան. [իգ]Թող տուր ինծի՝ որ
զանոնք կորսընցընեմ, ու [իդ]անոնց
անունը երկինքին տակէն բնաջինջ
ընեմ. [իե]Եւ քեզ անոնցմէ զօրաւոր
ու բազմաթիւ ազգ մը պիտի ընեմ:
15 [իզ]Այն ատենը ես դարձայ, լեռնէն
վար իջայ. [իէ]ու լեռը կրակով կ'այ-
րէր, և ուխտին երկու տախտակ-
ները երկու ձեռքերուս վրան էր:
16 [իը]Ետքը նայեցայ տեսայ որ՝ ձեր Տէր
Աստուծոյն դէմ մեղք գործելով՝
ձեզի ձուլածոյ որթ շիներ էիք.
Տէրոջը ձեզի պատուիրած ճամբա-
17 յէն շուտով խոտորեր էիք. Այն
ատենը այն երկու տախտակները

Ն. Ք. Գ.
1451

ժա Ծն. ժբ. 7; ժգ. 15; ժե. 7; ժէ. 8; իզ. 4; իը. 13;
ժբ Հմր 13; Ել. լբ. 9; լգ. 3; լդ. 9;
ժգ Ել. ժզ. 11; ժզ. 2; ժէ. 2; Թու. ժա. 4; ի. 2; իե. 2; Գլ. լա. 27;
ժդ Ել. լբ. 4; Սաղ. ճզ. 19;
1491
ժե Ել. իդ. 12, 15;
ժզ Ել. իդ. 18; լդ. 28;
ժէ Ել. լա. 18;
ժը Ել. ժթ. 17; ի. 1; Գլ. դ. 10; ժ. 4; ժը. 16;
ժթ Ել. լբ. 7;
ի Գլ. լա. 29; Դատ. բ. 17;
իա Ել. լբ. 9;
իբ Հմր 6; Գլ. ժ. 16; լա. 27; Դ Թագ. ժէ. 14;
իգ Ել. լբ. 10;
իդ Գլ. իթ. 20; Սաղ. Թ. 5; ճթ. 13;
իե Թու. ժդ. 12;
իզ Ել. լբ. 15;
իէ Ել. ժթ. 18; Գլ. դ. 11; ե. 23;
իը Ել. լբ. 19;

Ն. ք. գՔ. 1451

բռնեցի, ու իմ երկու ձեռքերուս
վրայէն վար նետեցի, և ձեր աչքե-
րուն առջեւ զանոնք կոտրտեցի ։
18 Ետքը առջինին պէս ա Տէրոջը առ-
ջեւ *աղաչեցի քառասուն օր ու
քառասուն գիշեր. ոչ հաց կերայ՝
ոչ ալ ջուր խմեցի, ձեր գործած
բոլոր մեղքին համար. վասն զի
Տէրոջը առջեւ չարութիւն ընելով՝
19 զանիկայ բարկացուցեր էիք. բ Ու
ես վախցայ այն սոսկալի բարկու-
թենէն՝ որով Տէրը ձեր վրայ բար-
կացաւ ձեզ կորսընցընելու համար.
գ սակայն Տէրը այն անգամին ալ
20 ինծի լսեց ։ Եւ Տէրը Ահարոնին
խիստ բարկացաւ, անանկ որ զա-
նիկայ պիտի կորսընցընէր. ու նոյն
ատենը Ահարոնին համար ալ ա-
21 ղօթք ըրի ։ Եւ դ ձեր ըրած մեղքը՝
այսինքն որթը առի, ու զանի-
կայ կրակով այրեցի. ետքը զանի-
կայ ծեծելով՝ լաւ մը փշրեցի, մին-
չեւ որ մանր փոշի եղաւ. և այն փո-
շին լեռնէն իջնող առուին մէջը
նետեցի ։
22 Նաեւ ե Թաբերայի, զ Մասսայի ու
է Կիբրօթ Հաթթաւայի մէջ Տէրը
23 բարկացուցիք ։ Ու ը երբոր Տէրը
ձեզ Կադէս Բառնեայէն խրկեց, և
ըսաւ. Ելէ՛ք, ու իմ ձեզի
տուած երկիրս ժառանգեցէ՛ք. այն
ատենը ձեր Տէր Աստուծոյն հրա-
մանին անհնազանդութիւն ըրիք,
ու թ անոր չհաւատալով՝ անոր խօս-
24 քը մտիկ չըրիք ։ ժ Ձեզ ճանչցած
օրէս ՚ի վեր՝ Տէրոջը անհնազանդ
էք ։
25 ի Ուստի ես քառասուն օր ու
քառասուն գիշեր որ աղաչեցի, Տէ-
րոջը առջեւ աղաչեցի. որովհետեւ
Տէրը ըսաւ որ ձեզ կորսընցընէ ։
26 լ Եւ ես Տէրոջը աղաչելով՝ ըսի.
Ո՛վ Տէր Եհովայ, մի՛ կորսընցըներ
քու ժողովուրդդ ու ժառանգու-
թիւնդ՝ որն որ քու մեծութեամբդ
ազատեցիր, ու զօրաւոր ձեռքով
27 Եգիպտոսէն հանեցիր։ Քու ծա-
ռաներդ՝ Աբրահամը, Իսահակը ու
Յակոբը յիշէ, խ այս ժողովուրդին
խստութեանը, անօրէնութեանը
28 ու մեղքին մի՛ նայիր. Չըլլայ որ՝
այն երկիրը ուսկից որ մեզ հանե-
ցիր, ծ անոր բնակիչները ըսեն թէ՝
կ Տէրը կարող չըլլալով զանոնք
տանելու այն երկիրը՝ որ անոնց
խոստացեր էր, կամ զանոնք ա-
տելով, հանեց զանոնք որ ա-
29 նապատին մէջ մեռցընէ ։ հ Ո-
րովհետեւ անոնք քու ժողովուրդդ
ու ժառանգութիւնդ են, որոնք
դուն քու մեծ զօրութեամբդ ու
բարձր բազուկովդ Եգիպտոսէն հա-
նեցիր ։

ա Ել. լդ. 28։ Սաղ. ճզ. 23։
* Եբր. ին-կայ
բ Ել. լբ. 10, 11։
գ Ել. լբ. 14։ լգ. 17։ Գլ. ժ. 10։ Սաղ. ճզ. 23։
դ Ել. լբ. 20։ Ես. լա. 7։
ե Թու. ժա. 1, 3, 5։
զ Ել. ժէ. 7։
է Թու. ժա. 4, 34։
ը Թու. ժգ. 4։ ժդ. 1։
թ Սաղ. ճզ. 24, 25։
ժ Գլ. լա. 27։
ի Հմր 18։
լ Ել. լբ. 11։
կ Ել. լբ. 12։ Թու. ժդ. 16։
հ Գլ. դ. 20։ գ Թագ. ը. 51։ Նեեմ. ա. 10։ Սաղ. ղե. 7։

ԳԼ. Ժ

1 Մովսէս կը յիշէ Աստուծոյ ողորմութիւնը՝ որ նորէն ուրիշ երկու տախտակներու վրայ գրեց օրէնքը։ 6 քահանայութեան յաջորդութիւնը որոշեց, 8 Ղեւիին ցեղը զատեց։ 10 ու ժողովուրդին համար Մովսէսին ըրած աղաչանքը ընդունեց ։ 12 Հնազանդութեան յորդորանք մը ։

1 Այն ատենը Տէրը ինծի ըսաւ. ա Քե-
զի առջիններուն պէս երկու հաստ
քարէ տախտակներ կոփէ, ու լեռը
ինծի ելիր, ու նաեւ բ քեզի մէկ
2 փայտէ տապանակ մը շինէ ։ Եւ
տախտակներուն վրայ՝ քու կոտ-
րած առջի տախտակներուդ վրայի
խօսքերը պիտի գրեմ, ու գ զանոնք
3 տապանակին մէջը դնես ։ Ուստի
ես դ Սատիմի փայտէ տապանակ մը
շինեցի, ե ու առջինին պէս երկու
հաստ քարէ տախտակներ կոփեցի,
ու՛ այն երկու տախտակները ձեռքս
4 առնելով՝ լեռը ելայ ։ Եւ զ տախ-
տակներուն վրայ՝ առջի գրուած-
քին պէս՝ այն տասը խօսքերը գրեց,
է որոնք Տէրը ձեզի լեռանը վրայ
կրակին մէջէն խօսեցաւ ը ժողովքին
օրը. և Տէրը զանոնք ինծի տուաւ ։
5 Անկէ դառնալով՝ թ լեռնէն վար ի-
ջայ. ու ժ տախտակները՝ շինած
տապանակիս մէջը դրի, ի որ այն
տեղը կենան, ինչպէս որ Տէրը ին-
ծի պատուիրեց ։
6 Եւ Իսրայէլի որդիքը՝ Բէրոթ
Բանէ Յականէն Մօսէրա չուեցին.
խ Հոն մեռաւ Ահարոնը, ու հոն
թաղուեցաւ. և անոր տղան Եղիա-
զարը անոր տեղը քահանայ եղաւ ։
7 ծ Անկէ Գադգադ, ու Գադգադէն
ջուրի առուներու երկիրը՝ Յետե-
բաթան չուեցին ։
8 Այն ատենը Տէրը կ Ղեւիին ցեղը
զատեց, հ որ Տէրոջը ուխտին տա-
պանակը կրէ, ձ Տէրոջը առջեւ կե-
նայ՝ որ անոր ծառայութիւն ընէ,
ու ղ անոր անունովը օրհնէ մինչեւ աս
9 օրս ։ ճ Ասոր պատճառաւ Ղեւին իր
եղբայրցը հետ բաժին ու ժառան-
գութիւն չունի. անոր ժառանգու-
թիւնը Տէրն է, ինչպէս որ քու Տէր
Աստուածդ անոր ըսաւ ։
10 Եւ մ ես առջի օրերուն համեմատ՝
քառասուն օր ու քառասուն գիշեր
լեռանը վրայ կեցայ, ու յ Տէրը աս
անգամին ալ ինծի մտիկ ընելով՝
11 չուզեց քեզ կորսընցընել ։ ն Եւ
Տէրը ինծի ըսաւ. Ելի՛ր՝ ու ժողո-
վուրդին առջեւէն չուէ, որ մտնեն
ու ժառանգեն այն երկիրը՝ որն որ
անոնց հայրերուն երդում ըրի ա-
նոնց տալու համար ։
12 Ուրեմն ո՛վ Իսրայէլ, շ հիմա քու
Տէր Աստուածդ քեզմէ ի՞նչ կը
պահանջէ. միայն թէ ո քու Տէր
Աստուծմէդ վախնաս, չ անոր ամէն

Ն. ք. գՔ. 1451

1491
ա Ել. լդ. 1, 2։
բ Ել. իե. 10։
գ Ել. իե. 16, 21։
դ Ել. իե. 5, 10։ լէ. 1։
ե Ել. լդ. 4։
զ Ել. լդ. 28։
է Ել. ի. 1։
ը Ել. ժթ. 17։ Գլ. թ. 10։ ժը. 16։
թ Ել. լդ. 29։
ժ Ել. խ. 20։
ի Գ Թագ. ը. 9։
լ Թու. լգ. 31։
խ Թու. ի. 28։ լգ. 38։
ծ Թու. լգ. 32, 33։
կ Թու. գ. 6։ դ. 4։ ը. 14։ ժզ. 9։
հ Թու. դ. 15։
ձ Գլ. ժը. 5։
ղ Ղև. թ. 22։ Թու. զ. 23։ Գլ. իա. 5։
ճ Թու. ժը. 20, 24։ Գլ. ժը. 1, 2։ Եզեկ. խդ. 28։
1491
մ Ել. լդ. 28։ Գլ. թ. 18, 25։
յ Ել. լբ. 14, 33, 34։ լդ. 17։ Գլ. թ. 19։
ն Ել. լբ. 34։ լգ. 1։
շ Միք. զ. 8։
ո Գլ. զ. 13։
չ Գլ. ե. 33։

Ն․ Ք․ ԴՃ․
1451

ղ Գլ․ զ․ 5 ։ Ժա․ 13 ։ Լ․ 16 ․ 20 ։ Մատ․ իբ․ 37 ։
է Գլ․ դ․ 24 ։
ա Թագ․ ը․ 27 ․ Սաղ․ ճժն ․ 16 ։
Յոբ․ 4 ։
ա Ծն․ ժէ․ 19 ։ Եւ․ ժթ․ 5 ։ Սաղ․ ԽԴ․ 1 ։
վ Գլ․ դ․ 37 ։
բ Ղև․ իզ․ 41 ։ Գլ․ լ․ 6 ։ Երեմ․ դ․ 4 ։ Հռովմ․ բ․ 28 ․ 29 ։ Կող․ բ․ 11 ։
ր Գլ․ Թ․ 6 ․ 13 ։
ց Յես․ իբ․ 22 ։ Սաղ․ ճլզ․ 2 ։ Դան․ բ․ 47 ։ Ժա․ 33 ։
ա Յայտ․ ժէ․ 14 ։ ժԹ․ 16 ։
ի Գլ․ է․ 21 ։
ժ բՄն․ ժԹ․ 7 ։ Յոբ․ լդ․ 19 ։ Գործ․ ժ․ 34 ։ Հռովմ․ բ․ 11 ։ Գաղ․ բ․ 6 ։ Եփես․ զ․ 9 ։ Կող․ գ․ 25 ։ Ա Պետ․ ա․ 17 ։
ս Սաղ․ կբ․ 5 ։ Յակ․ Ց․ 9 ։
ք Ղև․ ժԹ․ 33 ․ 34 ։
ա Գլ․ զ․ 13 ։ Մատ․ դ․ 10 ։ Ղուկ․ դ․ 8 ։
բ Գլ․ ժա․ 22 ։ ժգ․ 4 ։
գ Սաղ․ կդ․ 11 ։
դ Ել․ ժԹ․ 2 ։ Սաղ․ իր․ 3 ։ Երեմ․ ժէ․ 14 ։
ե Թագ․ ժբ․ 24 ։ բ Թագ․ է․ 23 ։ Սաղ․ ճզ․ 21 ․ 22 ։
զ Ծն․ խզ․ 27 ։ Ել․ ա․ 5 ։ Գործ․ է․ 14 ։
է Ծն․ ժե․ 5 ։ Գլ․ ա․ 10 ։ իբ․ 62 ։

ա Գլ․ Ժ․ 12 ։ Լ․ 16 ․ 20 ։
բ Զաք․ գ․ 7 ։
գ Գլ․ բ․ 5 ։
դ Գլ․ Ե․ 24 ։
ե Գլ․ Է․ 19 ։

ճամբաներուն մէջ քալես , և զա-
նիկայ սիրես , ու նաև քու բոլոր
սրտովդ ու բոլոր հոգիովդ քու
13 Տէր Աստուածդ պաշտես , Եւ Տէ-
րոջը պատուիրանքները ու կանոն-
ները պահես , որոնք ես այսօր քեզի
կը պատուիրեմ , Որ քեզի աղէկ
14 ըլլայ ։ Ահա երկինքը ու երկնից
երկինքը , երկիրը ու բոլոր ա-
նոր մէջը եղածը՝ քու Տէր Աստու-
15 ծոյդ կը վերաբերի ։ Միայն թէ
Տէրը քու հայրերուդ հաւնեցաւ ,
ու զանոնք սիրեց . և անոնցմէ ետ-
քը անոնց զաւակները՝ այսինքն ձեզ
ընտրեց բոլոր ազգերուն մէջէն ,
16 ինչպէս որ այսօր կը տեսնէք ։ Ուս-
տի ձեր սրտերուն անթլփատու-
թիւնը թլփատեցէք . ու ձեր պա-
րանոցները ալ մի՛ խստացնէք ։
17 Քանզի ձեր Տէր Աստուածը՝ աս-
տուածներուն Աստուածը ու տէ-
րերուն Տէրն է , մեծ՝ հզօր ու
ահեղ Աստուած մըն է , որ աչա-
ռութիւն չըներ ու կաշառք չառ-
18 ներ ։ Անիկայ որբին ու որբևա-
րիին իրաւունք կ՚ընէ , պանդուխ-
տը կը սիրէ , ու անոր հաց ու հան-
19 դերձ կու տայ ։ Ուրեմն պան-
դուխտը սիրեցէք , քանզի դուք
ալ Եգիպտացւոց երկրին մէջ պան-
20 դուխտ էիք ։ Քու Տէր Աստուծ-
մէդ վախնաս , զանիկայ պաշ-
տես , և անոր յարիս , ու անոր
21 անունովը երդում ընես ։ Քու
պարծանքդ անիկայ է , և քու Աս-
տուածդ անիկայ է , որ քեզի հա-
մար աս մեծ ու սքանչելի բաները
ըրաւ , որոնք դուն քու աչքերովդ
22 տեսար ։ Քու հայրերդ եօթա-
նասուն հոգի էին երբոր Եգիպտոս
իջան . ու հիմա քու Տէր Աս-
տուածդ՝ քեզ երկնքի աստղե-
րուն պէս շատցուց ։

## ԳԼ․ ԺԱ

1 Մովսէս հնազանդութեան կը յորդորէ Իսրա-
յէլացիները ։ 2 Աստուծոյ մեծ գործքերուն
վրայ իրենց տեղեկութիւն ունենալովը 8 Աս-
տուծոյ մեծ օրհնութիւններուն խոստման-
քովը . 16 ու սպառնալիքովը ։ 18 Կ՚իմացընէ
նաև թէ պէտք է զգուշաւոր խորհրդածու-
թիւն ընել Աստուծոյ խօսքերուն մէջ . 26
օրհնութիւնը ու անէծքը անոնց առջևը կը
դնէ ։

1 Ուրեմն դուն քու Տէր Աստուածդ
սիրես , ու միշտ անոր պատուի-
րած բաները , կանոնները , դա-
տաստանները ու պատուիրանքները
2 պահես ։ Եւ այսօր գիտցէք . որ
ձեր որդւոցը չէ իմ խօսքս որովհե-
տև անոնք չեն գիտեր ու չտեսան
ձեր Տէր Աստուծոյն խրատը ,
անոր մեծութիւնը , զօրաւոր
3 ձեռքը ու բարձր բազուկը . Եգիպ-
տոսի մէջ՝ Եգիպտացւոց Փարաւոն
թագաւորին՝ ու անոր բոլոր երկ-
րին վրայ ըրած նշանները ու գործ-
4 քերը . Եւ ինչ որ ըրաւ Եգիպտա-
ցւոց զօրքերուն , ձիերուն ու կառ-
քերուն . ու երբոր անոնք ձեր ետևէն
ինկան , ինչպէս Տէրը՝ Կարմիր ծո-
վուն ջուրերը անոնց վրայ դար-
ձուց , ու զանոնք կորսնցուց մինչև
5 աս օրս . Եւ ինչ որ ըրաւ ձեզի ա-
նապատին մէջ՝ մինչև ձեր հոս
6 գալը . Ու ինչ որ Ռուբէնեան Եղի-
աբին որդւոցը՝ Դաթանին ու Ա-
բիրոնին ըրաւ . ինչպէս երկիրը իր
բերանը բացաւ , ու զանոնք իրենց
ընտանիքներովը՝ իրենց վրաննե-
րովը՝ ու իրենց ամէն ստացուած-
քովը՝ բոլոր Իսրայէլին մէջէն կլլեց ։
7 Սակայն Տէրոջը ըրած բոլոր մեծ
գործքերը տեսնողը՝ ձեր աչքերն
8 են ։ Ուրեմն պահեցէք ան ամէն
պատուիրանքները՝ որ ես այսօր
ձեզի կը պատուիրեմ , որպէս զի
զօրանաք՝ ու մտնէք ժառանգէք
ան երկիրը , ուր որ կ՚երթաք զանի-
9 կայ ժառանգելու . Եւ ձեր օրերը
երկար ըլլան ան երկրին վրայ , Որն
որ Տէրը ձեր հայրերուն երդում
ըրաւ՝ անոնց և անոնց սերունդին
տալու . անանկ երկիր մը՝ որ կաթ
ու մեղր կը բղխէ ։
10 Քանզի ան երկիրը՝ ուր որ դուք
պիտի մտնէք անիկայ ժառանգելու
համար , Եգիպտոսի երկրին պէս չէ՝
ուսկից որ ելաք . Որ հոն երբոր
սերմ կը ցանէիր , բանջարի պար-
տէզի պէս ոտքովդ անոր ջուր կու
11 տայիր ։ Այլ ձեր մտնելու ու ժա-
ռանգելու երկիրը՝ լեռներու ու հո-
վիտներու երկիր մըն է . երկինքի
12 անձրևին ջրովը կը ջրուի . Անանկ
երկիր մըն է , որն որ քու Տէր Աս-
տուածդ կը դարմանէ . քու Տէր
Աստուծոյդ աչքը՝ տարւոյն սկիզ-
բէն մինչև վերջը միշտ անոր վրայ է ։
13 Ուստի թէ որ զգուշութեամբ
մտիկ ընէք իմ բոլոր պատուիրանք-
ներս , որ այսօր ձեզի կը պատուի-
րեմ , ու ձեր Տէր Աստուածը սի-
րէք , և զանիկայ ձեր բոլոր սրտովը
14 ու բոլոր հոգիովը պաշտէք , Ան ա-
տենը ձեր երկրին անձրևը՝ առջի
ու վերջի անձրևը՝ իրենց ատենին
պիտի տամ . և քու ցորենդ , քու
գինիդ ու քու եղդ պիտի ժողվես .
15 Ու նաև քու արտիդ մէջ խոտ պի-
տի տամ անասուններուդ համար ,
16 որ ուտես ու կշտանաս ։ Ձեր ան-
ձերուն զգուշութիւն ըրէք , չըլ-
լայ որ ձեր սիրտը խաբուի , ու դուք
շիտակ ճամբայէն խոտորելով՝ օտար
աստուածներու պաշտէք , ու անոնց
17 երկրպագութիւն ընէք . Եւ Տէրը
ձեզի դէմ սաստիկ բարկանալով՝

Ն․ Ք․ ԴՃ․
1451

զ Սաղ․ հը․ 12 ։ Ճլն․ 9 ։
է Ել․ ժդ․ 27 ․ 28 ։ ժե․ 9 ․ 10 ։ Սաղ․ ճզ․ 11 ։
* Եբր․ յորդեցոյց ։
ը Թու․ ժզ․ 1 ․ 31 ։ իւ․ 3 ։ Սաղ․ ճզ․ 17 ։
թ Գլ․ ե․ 3 ։ է․ 19 ։
ժ Յես․ ա․ 6 ․ 7 ։
ի Գլ․ դ․ 40 ։ ե․ 16 ։ Առակ․ ժ․ 27 ։
լ Գլ․ Թ․ 5 ։
խ Ել․ գ․ 8 ։
ծ Զաք․ ժդ․ 18 ։
կ Գլ․ ը․ 7 ։
հ Թագ․ Թ 3 ։
ձ Հռմ 22 ։ Գլ․ զ․ 17 ։
ղ Գլ․ ժ․ 12 ։
ճ Ղև․ իզ․ 4 ։ Գլ․ իը․ 12 ։
մ Յովէլ բ․ 23 ։ Յակ․ ե․ 7 ։
յ Սաղ․ ճդ․ 14 ։
ն Գլ․ զ․ 11 ։ Յովէլ․ բ․ 19 ։
շ Գլ․ ԻԹ․ 18 ։ Յոբ․ լա․ 27 ։
ո Գլ․ ը․ 19 ։ Լ․ 17 ։
չ Գլ․ Է․ 15 ։

Ն · Ք · ՂՖ ·
1451

երկինքը գոցէ , որ անձրեւ չըլլայ ,
ու երկիրը իր պտուղը չտայ . եւ
Տէրոջը ձեզի տուած բարի երկրէն
շուտով կորսուիք ։
18 Աս իմ խօսքերս ձեր սրտին ու
հոգիին մէջ դրէք , ու զանոնք
նշանի համար ձեր ձեռքերուն վրայ
կապեցէ՛ք , ու ճակատնոցի համար
ձեր աչքերուն միջտեղը ըլլան .
19 Եւ զանոնք ձեր տղոցը սորվեցը-
նէք , ու տունը նստած ատենդ ,
ճամբան քալած ատենդ , եւ պառ-
կելու ու ելլելու ատենդ՝ անոնք
20 խօսիս . Եւ զանոնք քու տանդ
դրանդեացը վրայ ու դռներուդ
21 վրայ գրես . Որպէս զի ան երկրին
վրայ՝ որ Տէրը ձեր հայրերուն եր-
դուամ ըրաւ անոնց տալու , ձեր
օրերը ու ձեր որդւոցը օրերը շատ-
նան , երբեւ երկինքի օրեր երկրի
վրայ ։
22 Քանզի թէ որ աս իմ ձեզի պա-
տուիրած բոլոր պատուիրանքներս
զգուշութեամբ պահէք՝ ու կատա-
րէք , եւ ձեր Տէր Աստուածը սիրէք ,
ու անոր բոլոր ճամբաներուն մէջը
23 քալէք , եւ անոր յարիք , Տէրն
ալ աս ամէն ազգերը ձեր առջեւէն
պիտի վռընտէ , եւ դուք՝ ձեզմէ
մեծ ու զօրաւոր ազգերու վրայ պի-
24 տի տիրէք ։ Ձեր ոտքին ամէն
կոխած տեղը՝ ձերը պիտի ըլլայ .
ձեր սահմանը՝ անապատէն ու
Լիբանանէն՝ գետէն՝ այսինքն Եփ-
րատ գետէն մինչեւ արեւմտեան
25 ծովը պիտի ըլլայ ։ Բնաւ մէկը պի-
տի չկարենայ ձեզի դէմ դնել . ձեր
Տէր Աստուածը՝ ձեր ամէն կոխած
երկրին վրայ՝ ձեզմէ վախ մը ու
սոսկում մը պիտի բերէ , ինչպէս
որ ձեզի ըսաւ ։
26 Ահա ես այսօր ձեր առջեւ օրհ-
նութիւն ու անէծք կը դնեմ .
27 Օրհնութիւնը՝ թէ որ հնազանդու-
թիւն ընէք ձեր Տէր Աստուծոյն
պատուիրանքներուն , որոնք ես
28 այսօր ձեզի կը պատուիրեմ Եւ
անէծքը՝ թէ որ ձեր Տէր Աստուծոյն
պատուիրանքներուն չհնազանդիք ,
ու խոտորիք ան ճամբայէն՝ որ ես
այսօր ձեզի կը պատուիրեմ , ու ձեր
չճանչցած օտար աստուածներուն
29 ետեւէն երթաք ։ Ուստի երբոր քու
Տէր Աստուածդ քեզ տանի ան
երկիրը , ուր որ պիտի մտնես ու
ժառանգես , օրհնութիւնը՝ Գարի-
զին լեռանը վրայ , ու անէծքը՝ Գե-
30 բաղ լեռանը վրայ տաս . Ահա ա-
սոնք Յորդանանու անդին կողմը
արեւմտեան ճամբուն վրայ՝ Մօրէի
կաղնիներուն մօտ Գաղգաղային
դիմացի հովիտին մէջ բնակող
Քանանացւոց երկրին մէջն են ։
31 Որովհետեւ դուք Յորդանանէն
պիտի անցնիք , որ մտնէք ու ժա-
ռանգէք ան երկիրը՝ որն որ ձեր Տէր
Աստուածը ձեզի պիտի տայ . ու
զանիկայ պիտի ժառանգէք , եւ ա-
32 նոր մէջ պիտի բնակիք ։ Ուրեմն
զգուշութեամբ ՚ի գործ դրէք ան
ամէն կանոնները ու դատաստան-
ները՝ որոնք ես այսօր ձեր առջեւ կը
դնեմ ։

## ԳԼ · ԺԲ

1 Կռապաշտութեան շէնքերը պէտք էր կոր-
ծանել ։ 5 Աստուծոյ երկրպագութիւնը իր
ընտրած տեղը պիտի մատուցուէր ։ 15 , 23
Արիւն ուտելը կ'արգիլուի ։ 17 , 20 , 26
Սուրբ բաները սուրբ տեղի մը մէջ պիտի ու-
տուէր ։ 19 Ղեւտացին անտես չընելու վրա-
յով ։ 29 Կռապաշտութեան սովորութիւն-
ները քննել պէտք չէր ։

1 Ասոնք են ան կանոնները ու դա-
տաստանները՝ որոնք դուք պա-
հելու ու ընելու էք ան երկրին վը-
րայ որն որ ձեր հայրերուն Տէր
Աստուածը ձեզի պիտի տայ ժառան-
գելու համար , բոլոր ժամանակ
2 որ երկրի վրայ ապրիք ։ Ան բոլոր
տեղուանքը՝ ուր որ ձեր յաղթելու
ազգերը՝ բարձր լեռներու վրայ ,
բլուրներու վրայ ու ամէն տերեւալից
ծառերու տակ՝ իրենց աստուածնե-
րը պաշտեր են , բոլորովին կործա-
3 նէք . Նաեւ անոնց սեղանները
փլցընէք , եւ անոնց արձանները կո-
տըրտէք . անոնց անտառները կրա-
կով այրէք , ու անոնց աստուած-
ներուն կուռքերը կտոր կտոր ը-
նէք , եւ անոնց անունները ան տե-
ղէն ոչնչացընէք ։
4 Ձեր Տէր Աստուծոյն այսպէս
5 պիտի չընէք . Հապա դուք պիտի
փնտռէք ան տեղը՝ որն որ ձեր Տէր
Աստուածը ձեր ամէն ցեղերուն
մէջէն պիտի ընտրէ իր անուանը
բնակութեան համար , ու հոն պի-
6 տի երթաք . Եւ ձեր ողջակէզները ,
ձեր զոհերը , ձեր տասանորդները ,
ձեր բարձրացընելու ընծաները ,
ձեր ուխտերը , ձեր կամաւոր ընծա-
ները ու ձեր արջառներուն ու ոչ-
խարներուն առջինեկները հոն տա-
7 նիք Եւ հոն ձեր Տէր Աստու-
ծոյն առջեւ ուտէք , եւ ձեր Տէր
Աստուածը ձեզ օրհնելուն համար՝
ձեր ամէն ձեռք զարկած բաներուն
մէջ ուրախանաք՝ թէ դուք եւ թէ
ձեր ընտանիքը ։
8 Մի ընէք ան ամենուն համեմատ ,
որ մենք այսօր աս տեղս կ'ընենք ,
այսինքն՝ ամէն մարդ իր աչքերուն
9 հաճոյ եղածին պէս Քանզի մին-
չեւ հիմա չհասաք ան հանգստու-
թեանը ու ժառանգութեանը՝ որ
ձեր Տէր Աստուածը ձեզի պիտի
10 տայ ։ Բայց դուք Յորդանանէն

Ն · Ք · ՂՖ · 1451

Բ Օրին · Ը · 35 ։ Թ Մն · Գ · 26 ։ Ե · 13 ։
Գլ · Դ · 26 ։ Ը · 19 , 20 ։ Լ · 18 ։ Յես · Իգ · 13 , 15 , 16 ։
Գլ · Զ · 6 ։ Լը · 46 ։
Գլ · Զ · 8 ։
Գլ · Դ · 9 , 10 ։ Զ · 7 ։
Գլ · Զ · 9 ։
Գլ · Դ · 40 ։ Զ · 2 ։ Առակ · Դ · 2 ։ Դ · 10 ։ Թ · 11 ։
Սաղ · Հը · 5 ։ ՃԹ · 29 ։
Հմր 13 ։ Գլ · Զ · 17 ։
Գլ · Ժ · 20 ։ Լ · 20 ։
Գլ · Դ · 38 ։ Թ · 5 ։
Գլ · Թ · 1 ։
Յես · Ա · 3 ։ ԺԴ · 9 ։
Ծն · ԺԵ · 18 ։ Ել · Իգ · 31 ։ Թուոց · ԼԴ · 3 , ևն ։
Եփր · ետեւ
Գլ · Է · 24 ։
Գլ · Բ · 25 ։
Ել · Իգ · 27 ։
Գլ · Լ · 1 , 15 , 19 ։
Գլ · ԻԸ · 2 ։
Գլ · ԻԸ · 15 ։
Գլ · ԻԷ · 12 13 ։ Յես · Ը · 33 ։
Ծն · ԺԲ · 6 ։ Դատ · Է · 1 ։

Ն · Ք · ՂՖ · 1451

Գլ · Թ · 1 ։ Յես · Ա · 11 ։
Գլ · Ե · 32 ։ ԺԲ · 32 ։

Գլ · Զ · 1 ։
Գլ · Դ · 10 ։ Դ Թագ · Ը · 40 ։
Ել · ԼԴ · 13 ։ Գլ · Է · 5 ։
Դ Թագ · ԺԶ · 4 ։ ԺԷ · 10 , 11 ։ Երեմ · Գ · 6 ։
Թուոց · ԼԳ · 52 ։ Դատ · Բ · 2 ։
Հմր 31 ։
Հմր 11 ։ Գլ · ԻԶ · 2 ։ Յես · Թ · 27 ։ Գ Թագ · Ը · 29 ։ Բ Մն · Է · 12 ։ Սաղ · Հը · 68 ։
Ղև · ԺԷ · 3 , 4 ։
Հմր 17 ։ Գլ · ԺԴ · 22 , 23 ։ ԺԵ · 19 , 20 ։
Գլ · ԺԴ · 26 ։
Հմր 12 , 18 ։ Ղև · ԻԳ · 40 ։ Գլ · ԺԶ · 11 , 14 , 15 ։ ԻԶ · 11 ։ ԻԷ · 7 ։
Դատ · ԺԷ · 6 ։ ԻԱ · 25 ։
Գլ · ԺԱ · 31 ։

Ն. Ք. ԴԲ. 1451

պիտի անցնիք . ու պիտի բնակիք
ան երկրին մէջ՝ որ ձեր Տէր Աս-
տուածը ձեզի ժառանգութիւն պի-
տի տայ . ու ձեր բոլոր շրջակայ
թշնամիներէն ձեզ պիտի հանգստա-
ցընէ . ու ապահովութեամբ պի-
11 տի բնակիք ։ Եւ այն տեղը՝ որ
ձեր Տէր Աստուածը պիտի ընտրէ
իր անուանը բնակութեան համար ,
բոլոր ձեզի պատուիրածներս հոն
տանիք . ձեր ողջակէզները՝ ձեր
զոհերը՝ ձեր տասանորդները՝ ձեր
բարձրացընելու ընծաները՝ ու ձեր
բոլոր ուխտերուն ընտիր ընծաները ,
12 որ Տէրոջը պիտի ուխտէք . Եւ
ձեր Տէր Աստուծոյն առջեւը ու-
րախութիւն ընէք , թէ դուք՝ թէ
ձեր տղաքները ու աղջիկները . ձեր
ծառաները ու աղախինները , և թէ
ձեր դռները եղող Ղեւտացին . վասն
զի անիկայ ձեզի հետ բաժին ու
ժառանգութիւն չունի ։
13 Զգոյշ կեցիր . չըլլայ որ ամէն
տեսած տեղդ քու ողջակէզներդ
14 մատուցանես . Հապա քու ողջա-
կէզներդ այն տեղը մատուցանես ,
որն որ Տէրը քու ցեղերուդ մէկուն
մէջ պիտի ընտրէ . ու հոն իմ բո-
լոր պատուիրած բաներս կատարես ։
15 Սակայն քու ամէն քաղաքներուդ
մէջ՝ սրտիդ բոլոր ուզածին պէս
անասուններ մորթես , ու միս ու-
տես . որչափ որ քու Տէր Աստուածդ
քեզի օրհնութիւն տուեր է . ու
զանիկայ անմաքուր ու մաքուր
մարդը՝ այծեամի ու եղջերուի պէս
16 ուտեն ։ Բայց արիւնը չուտէք .
զանիկայ ջուրի պէս գետինը թա-
փէք ։
17 Ցորենիդ , գինիիդ ու եղիդ տա-
սանորդները , արջառներուդ ու հօ-
տերուդ առջինեկները , բոլոր ուխտ
ըրած ուխտերդ , և կամաւոր ու
բարձրացընելու ընծաներդ քու
դռներուդ մէջ պիտի չկրնաս ու-
18 տել . Հապա անոնք քու Տէր Աս-
տուծոյդ առջեւը՝ Տէր Աստուծոյդ
ընտրած տեղը ուտես , թէ դուն՝
թէ քու տղադ ու աղջիկդ , թէ
ծառադ ու աղախինդ , և թէ քու
դռներդ եղող Ղեւտացին . և քու
Տէր Աստուծոյդ առջեւը քու բոլոր
ձեռք զարկած բաներուդ վրայ ու-
19 րախանաս ։ Զգոյշ կեցիր , չըլ-
լայ որ Ղեւտացին անտես ընես , քա-
նի որ ողջ ես քու երկրիդ վրայ ։
20 Ու երբոր քու Տէր Աստուածդ
քեզի ըսածին պէս քու սահմանդ
մեծցընէ , ու սիրտդ միս ուտել ու-
զելով՝ Միս ուտեմ ըսես , սրտիդ
բոլոր ցանկութեանը պէս միս ու-
21 տես ։ Թէ որ քեզմէ հեռու ըլլայ
այն տեղը՝ որ քու Տէր Աստուածդ
պիտի ընտրէ իր անունը հոն դնե-
լու համար , քեզի պատուիրածիս
պէս քու արջառներէդ ու ոչխար-
ներէդ մորթես , որոնք Տէրը քեզի
պիտի տայ . ու քու սրտիդ բոլոր
ցանկութեանը պէս քու քաղաքնե-
22 րուդ մէջ ուտես ։ Ու այծեամը
ու եղջերուն ինչպէս որ կ՚ուտուի ,
անոնք ալ անանկ ուտես . անմա-
քուր ու մաքուր մարդը անխտրաբար
23 ուտեն ։ Բայց աղէկ զգուշացիր ,
որ արիւնը չուտես . վասն զի ա-
րիւնը՝ ոգին է . ու ոգին միսին հետ
24 չուտես . Անիկայ չուտես , այլ
25 ջուրի պէս գետինը թափես ։ Անի-
կայ մի ուտեր , որ քեզի՝ ու քեզ-
մէ ետքը քու որդւոցդ աղէկ ըլլայ ,
Տէրոջը առջեւը ուղիղ սեպուածը
26 ընելովդ . Բայց քու նուիրելու
բաներդ՝ և ուխտերդ առնես , ու
27 Տէրոջը ընտրած տեղը երթաս ։ Եւ
քու ողջակէզներդ՝ միսը ու արիւ-
նը՝ քու Տէր Աստուծոյդ սեղանին
վրայ մատուցանես . բայց քու զո-
հերուդ արիւնը՝ քու Տէր Աստու-
ծոյդ սեղանին վրայ թափուի , ու
միսը ուտես ։
28 Զգոյշ եղիր հնազանդելու այն բո-
լոր խօսքերուն՝ որոնք քեզի պա-
տուիրեցի , որպէս զի քու Տէր
Աստուծոյդ առջեւը աղէկ ու հաճոյ
եղածը ընելովդ՝ քեզի ու քեզմէ
ետքը քու որդւոցդ յաւիտեան ա-
ղէկ ըլլայ ։
29 Երբոր քու Տէր Աստուածդ քու
առջեւէդ ջարդէ այն ազգերը , որոնց
երկիրը դուն ժառանգելու պիտի եր-
թաս , ու երբոր անոնք ժառանգես
ու անոնց երկրին մէջ բնակիս ,
30 Զգոյշ կեցիր , չըլլայ որ անոնց
քու առջեւէդ բնաջինջ ըլլալէն ետ-
քը՝ անոնց հետեւելով որոգայթի
մէջ իյնաս . և չըլլայ որ անոնց աս-
տուածներուն վրայով հարցուփորձ
ընես , ըսելով . Աս ազգերը ինչ-
պէս իրենց աստուածները կը պաշ-
31 տէին . ես ալ այնպէս ընեմ ։ Դուն
քու Տէր Աստուծոյդ անանկ չընես .
քանզի անոնք՝ Տէրոջը ատելի եղած
բոլոր գարշելի բաները իրենց աս-
տուածներուն կ՚ընէին . որովհետեւ
անոնք իրենց աստուածներուն
պատիւ ընելու համար մինչեւ անգամ
իրենց տղաքները ու աղջիկները
32 կրակով կ՚այրէին ։ Ես քեզի ինչ
որ կը պատուիրեմ , զգուշացիր ան
ընելու . անոր վրայ բան մը չաւել-
ցընես , ու անկէ բան մը չպակսե-
ցընես ։

Ն. Ք. ԴԲ. 1451

## ԳԼ. ԺԳ

1 Կռապաշտութեան յորդորողները 6 որչափ
մօտ ազգականներէ ալ ըլլային , 9 անոնք քար-

Ն. Ք. ԴՓ.
1451

ա Զաք. Ժ. 2։
բ Մատ. ԻԴ. 24։ բ Թես. Բ. 9։
գ Տես Գլ. ԺԲ. 22։ Երեմ. ԻԲ. 9։ Մատ. Է. 22։
դ Գլ. Ը. 2։ Տես Մատ. ԻԴ. 24։ ա Կոր. ԺԱ. 19։ բ Թես. Բ. 11։ Ցայտ. ԺԴ. 14։
ե դ Թագ. ԻԴ. 3։ բ Մն. ԼԴ. 31։
զ Գլ. Ժ. 20։ Լ. 20։
է Գլ. ԺԲ. 20։ Երեմ. ԺԴ. 15։ Զաք. ԺԳ. 3։

ը Գլ. ԺԵ. 7։ ԻԲ. 21, 22, 24։ ա Կոր. Ե. 13։
թ Գլ. ԺԵ. 2։
ժ Տես Ծն. ԺԶ. 5։ Գլ. ԻԲ. 54։ Առակ. Ե. 20։ Միք. Է. 5։
ի ա Թագ. ԺԲ. 1, 3։ Ի. 17։

լ Առակ. ա. 10։

խ Գլ. ԺԵ. 5։

ծ Գլ. ԺԵ. 7։ Գոր. Է. 58։

կ Գլ. ԺԵ. 13։ ԺԹ. 20։
հ Ցես. ԻԲ. 11, &c։ Դատ. Ի. 1, 2։
ձ ա Յով. Բ. 19։ Յուդ. 19։

կռծուէին ։ 12 Կռապաշտից քաղաքներուն չխնայելու վրայով պատուէր ։

1 Թէ որ ձեր մէջէն մէկ մարգարէ մը
կամ ա երազատես մը ելլէ , բ ու
ձեզի նշան մը կամ հրաշք մը տայ ,
2 Եւ գ ձեզի ըսած նշանը կամ հրաշքը
կատարուի , ու ձեզի ըսէ թէ՝ Եր-
թանք օտար աստուածները պաշ-
տենք , որոնք դուք չէք ճանչցած .
3 Ան մարգարէին կամ երազատեսին
խօսքը մտիկ մի՛ ընէք . քանզի ձեր
Տէր Աստուածը դ ձեզ կը փորձէ ,
որ հասկընայ թէ արդեօք դուք ձեր
Տէր Աստուածը ձեր բոլոր սրտովը
4 ու բոլոր հոգիովը կը սիրէ՞ք ։ ե Ձեր
Տէր Աստուծոյն հետեւող ըլլաք , ու
անկէ վախնաք , անոր պատուիրանք-
ները պահէք , ու անոր խօսքին
հնազանդութիւն ընէք , զանիկայ
5 պաշտէք , զու անոր յարիք ։ Եւ
է ան մարգարէն կամ երազատեսը
պիտի մեռցուի . վասն զի ձեզ Ե-
գիպտոսի երկրէն հանող՝ ու ձեզ
ծառայութեան տունէն ազատող
ձեր Տէր Աստուծոյն դէմ ապըս-
տամբութիւն խօսեցաւ , որ ձեզ
խոտորեցընէ ան ճամբայէն՝ որ ձեր
Տէր Աստուածը ձեզի պատուիրեց
որ անոր մէջ քալէք . ը այսպէս չա-
րութիւնը ձեր մէջէն վերցընէք ։
6 թ Եթէ որ քու մօրդ տղան՝ քու
եղբայրդ , կամ քու տղադ , կամ
աղջիկդ , կամ ժ ծոցիդ կնիկը , և
կամ քու ի բարեկամդ՝ որ քու ան-
ձիդ պէս է ու «իրեն» , քեզ մոլորցընել
ուզելով՝ ծածկաբար ըսէ . Եր-
թանք՝ ու օտար աստուածները
պաշտենք , որոնք ո՛չ դուն ճանչ-
7 ցար՝ ո՛չ ալ քու հայրերդ . Ձեր
բոլորտիքը եղող ազգաց աստուած-
ներէն՝ թէ ձեզի մօտ ըլլան և թէ
ձեզմէ հեռու , երկրիս մէկ ծայրէն
8 մինչև մէկալ ծայրը , լ Անոր հաւա-
նութիւն չտաս , ո՛չ ալ անոր մտիկ
ընես . քու աչքդ անոր չխնայէ , ո՛չ
ալ անոր վրայ գութ ունենալով՝
9 պահես անիկայ . Այլ խ անշուշտ
մեռցընես . ծ զանիկայ մեռցընելու
համար՝ ծ նախ քու ձեռքդ անոր
վրայ ըլլայ , ու ետքը բոլոր ժողո-
10 վուրդին ձեռքը . Քարերով քար-
կոծես անիկայ , որ մեռնի . քանզի
ուզեց քեզ ապստամբեցընել քու
Տէր Աստուծմէդ , որ քեզ Եգիպ-
տոսի երկրէն՝ ծառայութեան տու-
11 նէն հանեց ։ Եւ կ բոլոր Իսրայէլը
լսելով՝ վախնայ , ու մէյմըն ալ
ձեր մէջը ասոր պէս չարութիւն
մը չընեն ։
12 հ Եթէ որ քու Տէր Աստուծոյդ
բնակութեան համար քեզի տուած
քաղաքներէն մէկուն վրայով լսես,
13 որ կ՚ըսեն թէ՝ ձ Ձեր մէջէն քանի
մը ղ «չար մարդիկներ» ելան , ու ի-
րենց քաղաքին բնակիչները ճա-
պըստամբեցուցին , ըսելով . ն Եր-
թանք՝ ձեր չճանչցած օտար աս-
14 տուածները պաշտենք , Ան ատենը
աղէկ մը քննես , ու հարցուփորձ
ընես , ու երբոր տեսնես որ բուռ-ըծ
բանը ճշմարիտ ու ստոյգ է , և ան
գարշելի բանը ձեր մէջը եղած է ,
15 Ան քաղաքին բնակիչները անպատ-
ճառ սուրի բերնէ անցընես , յ թէ
ան և թէ անոր մէջը եղած բոլոր
բաները նզովելով . անասուններն
16 ալ սուրի բերնէ անցընես . Եւ ա-
նոր բոլոր աւարը անոր հրապարա-
կին մէջը ժողվես , ու ն ան քաղաքը
և անոր բոլոր աւարը քու Տէր Աս-
տուծոյդ համար բոլորովին կրա-
կով այրես . ու ՚անիկայ յաւի-
տեան աւերակ ըլլայ , մէյմըն ալ
17 չշինուի ։ Եւ ո ան նզովածէն ձեռ-
քիդ մէջը բան մը չփակչի , որպէս
զի Տէրը ո իր սաստիկ բարկութե-
նէն դառնայ , քեզի ողորմութիւն
ու գթութիւն ընէ , և քեզ շատ-
ցընէ , ղ ինչպէս որ քու հայրերուդ
18 երդում ըրաւ , Թէ որ դուն քու
Տէր Աստուծոյդ ձայնին հնազան-
դութիւն ընելով՝ Հանոր բոլոր
պատուիրանքները պահես , որոնք
ես այսօր քեզի կը պատուիրեմ , ու
Տէր Աստուծոյդ առջեւը ուղիղ ե-
ղածը ընես ։

## ԳԼ. ԺԴ

1 Աստուծոյ որդիքը սուգի համար իրենց անձը տգեղացընելու չեն ։ 3 Անասուններէն , ձուկե-րէն , 11 ու Թռչուններէն ո րը պիտի ուտուէր՝ ու ո րը չուտուէր ։ 21 Ինքիրմէ մեռածը ուտե-լու չէր ։ 22 Աստուածային պաշտօնը կատա-րողներուն տրուելու տասանորդները ։ 23 Տէ-րոջը առջեւը վայելելու տասանորդները ու ե-րախայրիները ։ 28 Երրորդ տարւոյն ողոր-մութեան ու բարերարութեան տասանորդը ։

1 Որդիքն դուք ա ձեր Տէր Աստու-
ծոյն որդիքն էք , բ մեռելի հա-
մար՝ ձեր մարմնոյն վրայ կտրածներ
չընէ՛ք , ու ձեր աչքերուն մէջտեղի
2 մազերը չածիլէ՛ք . գ Քանզի դուն
քու Տէր Աստուծոյդ սուրբ ժողո-
վուրդն ես . և Տէրը երկրի վրայ ե-
ղած բոլոր ժողովուրդներուն մէջէն
քեզ ընտրեց՝ որ իրեն սեպհական
3 ժողովուրդ ըլլաս ։ դ Բնաւ պիղծ
բան մը չուտես ։
4 ե Ասոնք են ձեր ուտելու անա-
սունները . արջառը , ոչխարը ու
5 այծը , Եղջերուն , այծեամը , † գո-
մէշը , խարբուզը , այծքաղը , յա-
6 մոյրը ու անալութը ։ Եւ չորքո-
տանիներուն մէջ՝ ամէն կճղակա-
բաշխ , ( այսինքն՝ կճղակը երկուքի
բաժնուած ) , ու որոճացող անա-
7 սունները ուտէք . Բայց որոճա-
ցողներէն կամ կճղակաբաշխ ե-

Ն. Ք. ԴՓ.
1451

ղ Տես Դատ. ԺԹ. 22։ ա Թագ. Բ. 12։ ԻԵ. 17, 25։ գ Թագ. Իա. 10, 13։ բ Կոր. Զ. 15։
* Եբր. Բելիարի որդիներ
ճ դ Թագ. ԺԷ. 21։
ն Հմր 2, 6։
յ Եւ Իբ. 20։ Ցես. Զ. 17, 21։
ն Ցես. Զ. 24։

լ Ցես. Ը. 28։ Եսայ. ԺԷ. 1։ ԻԵ. 2։ Երեմ. ԽԹ. 2։
ո Գլ. Է. 26։ Ցես. Զ. 18։
ւ Ցես. Զ. 26։
ղ Ծն. ԻԲ. 17։ ԻԶ. 4, 24։ ԻԸ. 14։
Հ Գլ. ԺԲ. 25, 28, 32։

ա Հռով. Ը. 16։ Թ. 8, 26։ Գաղ. Գ. 26։
բ Ղև. ԺԹ. 28։ ԻԱ. 5։ Երեմ. ԺԶ. 6։ ԽԱ. 5։ ԽԷ. 5։ ա Թես. Դ. 13։
գ Ղև. Ի. 26։ Գլ. Է. 6։ ԻԶ. 18, 19։
դ Եզեկ. Դ. 14։ Գոր. Ժ. 13, 14։
ե Ղև. ԺԱ. 2, &c։
† Կամ՝ վիթը։

Ն․ք․ գՔ․
1451

ղողներէն ասոնք չուտէք․ ուղտը,
նապաստակը ու ճագարը․ քանզի
անոնք թէպէտ և կ՚որոճան, բայց
կճղակաբաշխ չեն, անոնք ձեզի
8 անմաքուր ըլլան․ Եւ խոզը՝ որ թէ
և անիկայ կճղակաբաշխ է, բայց
չորոճար․ անիկայ ձեզի անմաքուր
ղ Ղև․ ժա․ 26․ 27․
ըլլայ․ Ասոնց միսը չուտէ՛ք, Եւ
ասոնց դիերուն չդպչի՛ք․
ե Ղև․ ժա․ 9․
9 Ե Ջուրերուն մէջ բոլոր եղածնե-
րէն ասոնք ուտէք․ ամէն թև ու
10 թեփ ունեցողը ուտէ՛ք, Բայց ամէն
թև ու թեփ չունեցողը չուտէ՛ք․
անիկայ ձեզի անմաքուր ըլլայ․
11 Ամէն մաքուր թռչունը ուտէք․
է Ղև․ ժա․ 13․
12 Եւ ձեր չուտելու թռչունները ա-
սոնք են․ Արծիւը՝ և պասկուճը՝
13 ու գետարծիւը, Եւ ցինը՝ ու անգ-
ղը՝ և ուրուրը՝ իր տեսակին պէս,
14 Ու ամէն ագռաւը իր տեսակին
15 պէս, Եւ ջայլամը՝ ու բուն՝ և կը-
կուն ու բազէն իր տեսակին պէս,
16 Եւ հաւպատիրը՝ ու քաջահաւը՝ և
17 կարապը․ Եւ հաւալուսը՝ ու սև
18 անգղը՝ և հողամաղը, Եւ արագիլը
ու քարադրը իր տեսակին պէս․ և
ը Ղև․ ժա․ 20․
19 յոպոպը՝ ու չղջիկը․ Եւ Ը ամէն
թռչող զեռունները ձեզի անմա-
թ Տես Ղև․ ժա․ 21․
քուր ըլլան․ Թ անոնք պիտի չու-
20 տուին․ Ամէն մաքուր թռչուն-
ները ուտէք․
ի Ղև․ ժէ․ 15․ իբ․ 8․ Եզեկ․ դ․ 14․
լ Հմր 2․
21 Ի Ինքիրմէ մեռածը բնաւ չուտէք․
զանիկայ քու դռներդ եղող պան-
դուխտին տաս, որ ուտէ․ կամ օ-
տարազգիի մը ծախես․ Լ քանզի
դուն քու Տէր Աստուծոյդ սուրբ
ժողովուրդն ես․
խ Ել․ իգ․ 19․ լդ․ 26․
Խ Ուլը իր մօրը կաթին մէջ չե-
փես․
ծ Ղև․ իէ․ 30․ Գլ․ ժբ․ 6․ 17․ Նեեմ․ ժ․ 37․
22 Ծ Տարիէ տարի՝ քու ցանած սեր-
միդ արդիւնքէն՝ արտէն ելած ամէն
արմտիքներէն անպատճառ տասա-
23 նորդ տաս․ Եւ քու ցորենիդ, գի-
նիիդ ու եղիդ տասանորդը, ու
կ Գլ․ ժբ․ 19․ 20․
արջառներուդ և ոչխարներուդ
հ Գլ․ ժբ․ 5․ 6․ 7․ 17․ 18․
առջինեկները Հ քու Տէր Աստուծոյդ
առջևը ուտես, այն տեղը՝ որ ինքը
իր անուանը բնակութեանը համար
պիտի ընտրէ․ որպէս զի միշտ քու
Տէր Աստուածմէդ վախնալ սորվիս․
24 Ու թէ որ քու Տէր Աստուծոյդ
քեզ օրհնելուն համար՝ ճամբան
ձ Գլ․ ժբ․ 21․
քեզի հեռու ըլլայ, Ձ և այն տեղը՝
որ քու Տէր Աստուածդ պիտի
ընտրէ իր անունը հոն դնելու հա-
մար, քեզմէ հեռու ըլլալով՝ կա-
րող չըլլաս զանոնք հոն տանելու․
25 Այն ատենը զանոնք ստակ ընես, ու
ստակը ծրարելով ձեռքդ առնես․ և
քու Տէր Աստուծոյդ ընտրելու տե-
26 ղը երթաս․ Ու այն ստակը՝ սրտիդ
բոլոր ցանկացած բաներուն, ար-
ջառներու կամ ոչխարներու, գի-
նիի կամ օղիի, ու սրտիդ ամէն
ուզած բանին տաս․ Ղ և հոն քու
ղ Գլ․ ժբ․ 7․ 18․ իզ․ 11․
Տէր Աստուծոյդ առջևը ուտես ու
ուրախանաս, դուն և քու ընտա-
ճ Գլ․ ժբ․ 12․ 18․ 19․
27 նիքդ․ Ու Ճ քու դռներդ եղող Ղև-
տացին ալ զանց չընես․ քանզի
մ Թուոց․ ժը․ 20․ Գլ․ ժը․ 1․ 2․
Մ անիկայ քեզի հետ բաժին ու ժա-
ռանգութիւն չունի․
յ Գլ․ իզ․ 12․ Ամով․ դ․ 4․
28 Յ Ամէն երեք տարուան վերջը՝ այն
նոյն տարուան արմտիքներուն բոլոր
տասանորդը հանես․ և զանիկայ
քու քաղաքներուդ մէջը պահես․
ն Գլ․ իզ․ 12․ Հմր 27․ Գլ․ ժբ․ 12․
29 Ն Ու Ղևտացին՝ որ Ն քեզի հետ բա-
ժին ու ժառանգութիւն չունի, և
դռներդ եղող օտարականը, որբը
ու որբևայրին գան, և ուտեն կըշ-
շ Գլ․ ժե․ 10․ Առակ․ գ․ 9․ 10․ Տես Մաղ․ գ․ 10
տանան․ որպէս զի Շ քու Տէր Աս-
տուածդ քեզ օրհնէ քու ձեռքիդ
ըրած ամէն գործքերուն մէջ․

## ԳԼ․ ԺԵ

1 Եօթներորդ տարին թողութեան տարի պիտի ըլլար աղքատին համար 7 այսու ամենայնիւ փոխ պիտի տրուէր ու ձրի ալ տրուէր․ 12 Եբրայեցի ծառան եօթներորդ տարին ձրի ազատ պիտի ըլլար 16 իսկ նորոր իր տիրոջմէն գոհ ըլլալով՝ ուզէր քովը կենալ պիտի կրնար մնալ․ 19 Հօտերէն ամէն արու առջինեկները Տէրոջը պիտի նուիրուէին

ա Ել․ իա․ 2․ իգ․ 10․ 11․ Ղև․ իե․ 2․ 4․ Գլ․ լա․ 10․ Երեմ․ լդ․ 14․
1 Ա Ամէն եօթներորդ տարին՝ թո-
2 ղութիւն ընես․ Ու թողու-
թեան կանոնը աս է․ Ամէն պար-
տատէր՝ որ իր դրացիին բան մը
փոխ տուած է․ անիկայ պիտի
թողու․ իր դրացիէն կամ եղբօր-
մէն պիտի չպահանջէ զայն․ վասն զի
թողութիւն քարոզուած է Տէրո-
բ Տես Գլ․ իգ․ 20․
3 ջը․ Բ Օտարազգիէն պիտի պահան-
ջես, բայց քու եղբօրմէդ առնելիքդ
գ Կամ Անանկ
4 պիտի թողուս․ Գ Մինչև որ քու
քովդ աղքատ չգտնուի․ Դ վասն զի
դ Գլ․ իը․ 8․
Տէրը անշուշտ քեզ պիտի օրհնէ այն
երկրին մէջ, որն որ քու Տէր Աս-
տուածդ քեզի ժառանգութիւն
5 պիտի տայ որ անոր տիրես․ Միայն
ե Գլ․ իը․ 1․
Ե թէ որ քու Տէր Աստուծոյդ խօս-
քին ամէն կերպով հնազանդիս, ու
աս բոլոր պատուիրանքները որ ես
այսօր քեզի կը պատուիրեմ, զգու-
6 շութեամբ ՚ի գործ դնես․ Քու Տէր
Աստուածդ ալ քեզի ըսածին պէս՝
զ Գլ․ իը․ 12․ 44․
քեզ պիտի օրհնէ, և Զ դուն շատ
ազգերու փոխ պիտի տաս, բայց
է Գլ․ իը․ 13․ Առակ․ իբ․ 7․
դուն փոխ պիտի չառնես, ու Է դուն
շատ ազգերու վրայ պիտի տիրես,
բայց անոնք քու վրադ պիտի չտի-
րեն․
7 Քու Տէր Աստուծոյդ քեզի տուած
երկրին մէջը՝ քու քաղաքներուդ
ը Ա Յովհ․ գ․ 17․
մէկուն մէջ՝ թէ որ եղբայրներուդ
մէկը աղքատ ըլլայ, Ը խստասրտու-
թ Ղև․ իե․ 35․ Մատ․ ե․ 42․ Ղուկ․ զ․ 34․ 35․
թիւն չընես, ու աղքատ եղբօրդ
8 ձեռքդ չգոցես․ Թ Հապա անպատ-
ճառ ձեռքդ պիտի բանաս անոր,

Ն. Ք. ԳՔ.
1451

ա Գւ. իը. 54, 56։ Առակ. իդ. 6։ իը. 22։ Մատ. ի. 15։
բ Գւ. իդ. 15։
գ Մատ. իե. 41, 42։
դ Բ Կոր. թ. 5, 7։
ե Գւ. ժդ. 29։ իդ. 19։ Սաղ. խա. 1։ Առակ. իբ. 9։
զ Մատ. իզ. 11։ Մար. ժդ. 7։ Յով. ժբ. 8։
է Ել. իա. 2։ Ղև. իե. 39։ Երեմ. լդ. 14։
ը Առակ. ժ. 22։
թ Գւ. ե. 15։ ժզ. 12։
ժ Ել. իա. 5. 6։
ի Տես Ես. ժզ. 14։ իա. 16։
լ Ել. ժգ. 2։ լդ. 19։ Ղև. իէ. 26։ Թուոց. գ. 13։
խ Գւ. ժբ. 5, 6, 7, 17։ ժդ. 23։ ժզ. 11, 14։
ծ Ղև. իբ. 20։ Գւ. ժէ. 1։

ու անոր կարօտութեանը բաւա-
կան ըլլալու չափ անոր փոխ տաս ։
9 Զգո՛յշ կեցի՛ր՝ չըլլայ որ սրտիդ մէ-
ջէն չար խորհուրդ մը անցընես , ու
եօթներորդ տարին՝ թողութեան
տարին մօտ է՝ ըսելով , աղքատ
եղբօրդ վրայ [ա]անգութ աչքով նա-
յիս , ու անոր բան չտաս . և [բ]ան
ալ քեզի դէմ Տէրոջը աղաղակէ ,
10 ու [գ]դուն մեղքի տէր ըլլաս ։ Ան-
պատճառ անոր պիտի տաս , ու
անոր տալու ատենդ [դ]սիրտդ չնե-
ղի . վասն զի [ե]քու Տէր Աստուածդ
աս պատճառաւ քու ամէն գործքե-
րուդ ու ամէն ձեռք զարկած բանե-
11 րուդ մէջ քեզ պիտի օրհնէ ։ Ո-
րովհետև [զ]երկրին մէջէն աղքատ
պակաս պիտի չըլլայ , անոր համար
քեզի կը պատուիրեմ՝ ու կ'ըսեմ .
Քու երկրիդ մէջ եղած աղքատ ու
չքաւոր եղբօրդ՝ ձեռքդ բաց ըլլայ ։
12 Եւ [է]թէ որ քու եղբայրներէդ
Եբրայեցի մարդ մը կամ կնիկ մը
քեզի ծախուի , անիկայ վեց տարի
քեզի ծառայութիւն պիտի ընէ . ու
եօթներորդ տարին՝ զանիկայ քու
13 քովէդ ազատ պիտի արձակես ։ Եւ
քու քովէդ ազատ արձակելու ա-
տենդ՝ զանիկայ պարապ չարձակե՛ս .
14 Քու ոչխարներէդ , քու կալէդ և
քու հնձանէդ անպատճառ պարգև
տաս անոր . քու Տէր Աստուածդ
ինչպէս որ [ը]քեզ օրհնեց , անանկ
15 պիտի տաս անոր ։ Եւ [թ]միտքդ բե-
րես որ դուն ալ Եգիպտոսի երկրին
մէջ ծառայ էիր , ու քու Տէր Աս-
տուածդ քեզ անկէ փրկեց . աս
պատճառով այսօր քեզի կը պա-
16 տուիրեմ աս բանը . Բայց թէ որ
քեզ և քու տունդ սիրելուն հա-
մար , ու անիկայ քու քովդ հան-
գիստ ըլլալուն համար , [ժ]Քովէդ
17 չեմ ելլեր՝ ըսէ , Ան ատենը հերիւն
մը առնես , ու անոր ականջը դրանը
վրայ ծակես , և անիկայ քեզի յաւի-
տեան ծառայ ըլլայ . աղախնիդ
18 ալ այսպէս ընես ։ Զանիկայ քու
քովէդ ազատ արձակելդ՝ դժուար
չերևնայ քեզի . վասն զի քեզի վեց
տարի ծառայութիւն ըրաւ , [ի]որ
վարձկանի մը վարձքին կրկնապա-
տիկ արժէքը ունի . ու քու Տէր Աս-
տուածդ ամէն գործքերուդ մէջ
քեզ պիտի օրհնէ ։
19 [լ]Քու արջառներէդ ու հօտերէդ
ծնած ամէն արու առջինեկները քու
Տէր Աստուծոյդ պիտի նուիրես .
արջառներուդ առջինեկներովը չը-
գործես , ու առջինեկ ոչխարներուդ
20 բուրդը չխուզես ։ [խ]Տարիէ տարի քու
Տէր Աստուծոյդ առջևը՝ Տէրոջը
ընտրած տեղը պիտի ուտես զանոնք ,
21 դուն և քու ընտանիքդ ։ [ծ]Բայց թէ

որ անոնք արատաւոր ըլլան , կաղ
կամ կոյր ըլլան , կամ ինչ և իցէ
ուրիշ գէշ արատ մը ունենան , զա-
նոնք քու Տէր Աստուծոյդ չզոհես .
22 Անանկը՝ քու քաղաքներուդ մէջ
պիտի ուտես . [կ]անմաքուր ու մա-
քուր եղողները անխտրաբար ու-
տեն այծեամի ու եղջերուի պէս ։
23 [հ]Միայն անոր արիւնը չուտե՛ս .
ջուրի պէս գետինը թափես ան ։

կ Գւ. ժբ. 15, 22։
հ Գւ. ժբ. 16, 23։

## ԳԼ. ԺԶ

1 Զատկին , 9 շաբաթներուն , 13 և տաղաւարահարաց տօները ։ 16 Ամէն արուն իր կարողութեանը համեմատ ընծայ պիտի բերէր Տէրոջը՝ աս երեք տօներուն մէջ ։ 18 Դատաւորները ու դատաստանի վրայով ։ 21 Անտառ տնկելը ու արձան կանգնելը կ'արգիլուի ։

1 [ա]Աբիբ ամսուն զգուշութիւնով
նայէ , որ զատիկը ընես քու
Տէր Աստուծոյդ . [բ]վասն զի քու
Տէր Աստուածդ Աբիբ ամսուն մէջ
[գ]գիշերով հանեց քեզ Եգիպտոսէն ։
2 Զատկին համար՝ քու Տէր Աստու-
ծոյդ ոչխարներ ու [դ]արջառներ
մորթես , [ե]ան տեղը՝ որ Տէրը պի-
տի ընտրէ իր անուանը բնակու-
3 թեան համար . [զ]Անոր հետ խմո-
րեալ հաց չուտե՛ս . եօթը օր նե-
ղութեան անխմոր հաց պիտի ու-
տես անոր հետ . վասն զի Եգիպտո-
սի երկրէն տագնապով ելար . որ
քու կենացդ բոլոր օրերուն մէջ՝
Եգիպտոսի երկրէն ելած օրդ միտքդ
4 բերես ։ [է]Եւ քու բոլոր սահման-
ներուդ մէջ եօթը օր բնաւ խմոր
չերևնայ . [ը]Ու առջի օրուան իրի-
կունը մորթած միսէդ մինչև ա-
5 տու չմնայ ։ Քու Տէր Աստուծոյդ
քեզի տուած քու քաղաքներուդ
մէկուն մէջ բնաւ կարող չըլլաս
6 զատիկը մորթելու . Հապա միայն
ան տեղը՝ որ քու Տէր Աստուածդ
պիտի ընտրէ իր անուանը բնակու-
թեան համար , հոն պիտի մորթես
զատիկը [թ]իրիկուան դէմ՝ արևը
մտած ատենը , Եգիպտոսէն ելած
7 ժամանակդ ։ Եւ [ժ]քու Տէր Աս-
տուծոյդ ընտրած տեղը [ի]անիկայ
եփես ու ուտես . և առտուանց
8 դառնաս՝ *տունդ երթաս ։ Վեց
օր բաղարջ ուտես . ու [լ]եօթնե-
րորդ օրը՝ քու Տէր Աստուծոյդ հա-
մար [խ]տօնախմբութեան օր ըլլայ ,
և գործ մը չընես ։
9 [ծ]Դուն քեզի եօթը շաբաթ համ-
րես . [illegible] եօթը շաբաթը՝ հունձ-
քերուն մէջը մանգաղ դրած ատե-
10 նէդ պիտի սկսիս համրել ։ Եւ որը
քու Տէր Աստուծոյդ շաբաթներուն
տօնը ընելով՝ [կ]քու Տէր Աստուծոյդ
քեզի տուած օրհնութեանը համե-
մատ՝ ձեռքէդ եկած կամաւոր ըն-

Ն. Ք. ԳՔ.
1451

ա Ել. ժբ. 2։
բ Ել. ժգ. 4։ լդ. 18։
գ Ել. ժբ. 29, 42։
դ Թուոց. իը. 19։
ե Գւ. ժբ. 5, 26։
զ Ել. ժբ. 15, 19, 39։ ժգ. 3, 6, 7։ լդ. 18։
է Ել. ժգ. 7։
ը Ել. ժբ. 10։ լդ. 25։
թ Ել. ժբ. 6։
ժ Դ Թագ. իգ. 23։ Յով. բ. 13, 23։ ժա. 55։
ի Ել. ժբ. 8, 9։ Բ Մն. լե. 13։
* Եբր. վրաններդ
լ Ել. ժբ. 16։ ժգ. 6։ Ղև. իգ. 8։
խ Ղև. իգ. 36։
ծ Ել. իգ. 16։ լդ. 22։ Ղև. իգ. 15։ Թուոց. իը. 26։ Գործ. բ. 1։
կ Հմր 17։ Ա Կոր. ժզ. 2։

Ն. Ք. ՉՔ.
1451

Գլ. ԺԲ. 7, 12, 18; Հմր 14:
* Կամ՝ տուներդ. Եբր. դռներդ
Գլ. ԺԵ. 15:
Ել. ԻԳ. 16; Ղև. ԻԳ. 34; Թուոց. ԻԹ. 12;
Նեեմ. Ը. 9, [illegible]:
Ղև. ԻԳ. 39, 40:
Ել. ԻԳ. 14, 17; ԼԴ. 23:
Ել. ԻԳ. 15; ԼԴ. 20:
Հմր 10:
Բ Կոր. Ը. 12:
Գլ. Ա. 16; Ա Մն. ԻԳ. 4; ԻԶ. 29; Բ Մն. ԺԹ. 5, 8:
Ել. ԻԳ. 2, 6; Ղև. ԺԹ. 15:
Գլ. Ա. 17; Առակ. ԻԴ. 23:
Ել. ԻԳ. 8; Առակ. ԺԷ. 23; Ժող. Է. 7:
Եզեկ. ԺԲ. 5, 9:
Ել. ԼԴ. 13; Դ Թագ. ԺԴ. 15; ԺԶ. 33; Դ Թագ. ԺԷ. 16; ԻԱ. 3; Բ Մն. ԼԳ. 3:
Ղև. ԻԶ. 1:

11 ծան պիտի տաս. Եւ այն տեղը՝ որ
քու Տէր Աստուածդ պիտի ընտրէ
իր անուանը բնակութեան համար,
Հոն քու Տէր Աստուծոյդ առջեւը
ուրախութիւն ընես. դուն ու քու
տղադ և աղջիկդ, քու ծառադ ու
աղախինդ, ու քու *քաղաքներդ
եղող Ղևտացին, և ձեր մէջը գըտ-
նուած օտարականը, որբը ու որբ-
12 ևարին: Ու Եգիպտոսի մէջ ծա-
ռայ ըլլալդ միտքդ բերելով՝ աս կա-
նոնները զգուշութեամբ 'ի գործ
դնես:
13 Քու կալիդ ու հնձանիդ բերքը
ժողվելէն ետքը՝ եօթը օր տաղաւա-
14 րահարաց տօնը պահես: Եւ տօ-
նիդ մէջը ուրախութիւն ընես,
դուն ու քու տղադ և աղջիկդ, քու
ծառադ ու աղախինդ, և քաղաք-
ներդ եղող Ղևտացին, օտարակա-
15 նը, որբը ու որբևարին: Քու Տէր
Աստուածդ քու բոլոր բերքերդ՝ ու
ձեռքիդ բոլոր գործքերը օրհնելուն
համար, Տէրոջը ընտրած տեղը՝
քու Տէր Աստուծոյդ եօթը օր տօն
պահելով՝ ուրախութիւն ընես:
16 Տարին երեք անգամ՝ այսինքն
բաղարջակերաց տօնին, շաբաթ-
ներու տօնին ու տաղաւարահարաց
տօնին՝ քու ամէն արուներդ քու
Տէր Աստուծոյդ առջեւը պիտի ե-
րեւնան այն տեղը՝ որն որ ինքը պի-
տի ընտրէ. ու մէկը Տէրոջը առ-
17 ջեւը պարապ չերեւնայ: Ամէն
մէկը՝ քու Տէր Աստուծոյդ քե-
զի տուած օրհնութեանը համեմատ,
ձեռքէն եկածին չափ ընծայ բերէ:
18 Քու Տէր Աստուծոյդ քեզի տուած
ամէն քաղաքներուդ մէջ, քու
ցեղերուդ համեմատ՝ քեզի դա-
տաւորներ ու ոստիկաններ կարգես,
ու անոնք արդար դատաստանով
19 ժողովուրդը դատեն: Իրաւունքը
չդարձընես, Աչառութիւն չընես
ու կաշառք չառնես. վասն զի կա-
շառքը իմաստուններուն աչքը կը
կուրացընէ, ու արդարներուն խօս-
20 քը սուտ կը հանէ: Արդարութեան՝
արդարութեան միայն հետեւող ըլ-
լաս, որ ողջ մնաս, և քու Տէր Աս-
տուծոյդ քեզի տալու երկիրը ժա-
ռանգես:
21 Քու Տէր Աստուծոյդ համար
շինելու սեղանիդ քովը՝ ինչ և իցէ
ծառէ անտառ չտնկես քեզի.
22 Արձան ալ չկանգնես քեզի, ուս-
կից որ քու Տէր Աստուածդ կը
զզուի:

### ԳԼ. ԺԷ

1 Տէրոջը մատուցուելու զոհերը անարատ պիտի ըլլային: 2 Կռապաշտները պիտի մեռցուէին: 8 Դժուարին վէճերը՝ քահանաները ու դատաւորները պիտի վճռէին. 12 ու անոնց վճիռին դէմ դնողը պիտի մեռցուէր: 14 Թագաւորի մը ընտրութիւնը, 16 ու անոր պարտաւորութիւնները:

1 Արատ մը կամ ինչ և իցէ † պակա-
սութիւն մը ունեցող արջառը
կամ ոչխարը՝ քու Տէր Աստուծոյդ
զոհ չմատուցանես. վասն զի աս
բանը՝ քու Տէր Աստուծոյդ առջեւը
պիղծ է:
2 Եթէ որ քու Տէր Աստուծոյդ
քեզի տուած քաղաքներուն մէկուն
մէջ՝ ձեզմէ այնպիսի մարդ մը կամ
կնիկ մը գտնուի, որ քու Տէր Աս-
տուծոյդ առջեւը չարութիւն ընե-
լով՝ ու անոր ուխտը չպահելով,
3 Իմ հրամանիս դէմ՝ երթայ ուրիշ
աստուածներու, արեգակին՝ կամ
լուսնին՝ և կամ երկնից որ և իցէ
‡ զօրքերուն ծառայութիւն ու
4 երկրպագութիւն ընէ. Եւ աս
բանը քեզի պատմուի, ու դուն
լսելէդ ետքը աղէկ մը քննութիւն
ընես, և ահա բանը ճշմարիտ ու
ստոյգ է, որ Իսրայէլի մէջ անանկ
5 պղծութիւն մը եղած է. Այն ա-
տենը աս չարութիւնը ընող մարդը
կամ կնիկը դռներդ հանես, և
այն մարդը կամ կնիկը քարերով
6 քարկոծես, ու մեռնի: Եւ եան
մահապարտը երկու կամ իրեք
վկայի բերնովը մեռնի. մէկ վկայի
7 բերնովը չմեռնի: Զանիկայ մեռ-
ցընելու համար, առաջ վկանե-
րուն ձեռքը անոր վրայ պիտի ըլ-
լայ, ու անկէ ետքը բոլոր ժողո-
վուրդին ձեռքը. աս կերպով չա-
րութիւնը ձեր մէջէն վերցընես:
8 Երբոր ‖ զանազան տեսակ արիւն-
հեղութիւններու, դատերու կամ
վէրքերու վրայով՝ քու քաղաքնե-
րուդ մէջ եղած վէճերուն վճռա-
հատութիւնը խիստ դժուար երե-
նայ քեզի, այն ատենը ելլես, և
քու Տէր Աստուծոյդ ընտրած տե-
9 ղը երթաս, Ու Ղևտացի քահա-
նաներուն և այն ժամանակի դա-
տաւորին մօտենալով խորհուրդ
հարցընես. ու անոնք դատաստա-
10 նին վճիռը քեզի պիտի ըսեն. Եւ
պիտի ընես այն վճռոյն համեմատ՝
որ Տէրոջը ընտրած տեղը քեզի կ'ը-
սեն, ու ինչ որ քեզի սորվեցընեն,
11 զգուշութեամբ 'ի գործ դնես. Ա-
նոնց քեզի սորվեցուցած օրէնքը՝
ու քեզի ըրուցած դատաստանը
պիտի կատարես. անոնց քեզի
յայտնած խօսքէն չխոտորիս, ոչ
12 աջ դին և ոչ ձախ դին: Բայց
թէ որ մէկ մարդ մը հպարտու-
թիւն ընելով՝ քու Տէր Աս-
տուածդ հոն պաշտելու կեցող քա-

Եզեկ. ԽԴ. 24; Թուոց. ԺԵ. 30; Եզր. Ժ. 8; Ովս. Դ. 4; Գլ. ԺԲ. 5, 7:

Ն. Ք. ՉՔ.
1451

Գլ. ԺԵ. 21; Մաղ. Ա. 8, 13, 14:
† Եբր. գէշ բան
Գլ. ԺԳ. 6:
Յես. Է. 11, 15; ԻԳ. 16; Դատ. Բ. 20; Դ Թագ. ԺԸ. 12; Ովս. Ը. 1:
Երեմ. Է. 22, 23, 31; ԺԹ. 5; ԼԲ. 35:
Գլ. Դ. 19; Յոբ. ԼԱ. 26:
‡ Եբր. զօրքին
Գլ. ԺԳ. 12, 14:
Ղև. ԻԴ. 14, 16; Գլ. ԺԳ. 10; Յես. Է. 25:
Թուոց. ԼԵ. 30; Գլ. ԺԹ. 15; Մատ. ԺԸ. 16; Յովհ. Ը. 17; Բ Կոր. ԺԳ. 1; Ա Տիմ. Ե. 19; Եբր. Ժ. 28:
Գլ. ԺԳ. 9; Գործ. Է. 58:
Հմր 12; Գլ. ԺԳ. 5; ԺԹ. 19:
Տես Ել. ԻԱ. 13, 20, 22, 28; ԻԲ. 2; Թուոց. ԼԵ. 11, 16, 19; Գլ. ԺԹ. 4, 10, 11:
‖ Եբր. արեան և արեան միջնտեղը, դատի ու դատի միջնտեղը, կամ վէրքի ու վէրքի միջնտեղը
Բ Մն. ԺԹ. 10; Անգ. Բ. 11; Մաղ. Բ. 7:
Գլ. ԺԲ. 5; ԺԹ. 17; Սաղ. ՃԻԲ. 5:
Տես Երեմ. ԺԸ. 18:
Գլ. ԺԹ. 17:

Ն. Բ. ՂԲ.
1451

Գլ. ժզ. 5 ։ Գլ. ժգ. 11 ։ ժթ. 20 ։
Յայտ. ը. 5 , 19 , 20 ։
Տես Ա. Թագ. թ. 15 ։ ժ. 24 ։ ժզ. 12 ։ Ա. Մն. իբ. 10 ։ Երեմ. լ. 21 ։
Գ. Թագ. դ. 26 ։ ժ. 26. 28 ։ Սաղ. ի. 7 ։
Ես. լա. 1 ։ Եզեկ. ժէ. 15 ։
Ել. ժգ. 17 ։ Թուոց. ժդ. 3 , 4 ։
Գլ. իը. 68 ։ Ովս. ժա. 5 ։ Տես Երեմ. խբ. 15 ։
Տես Գ. Թագ. ժա. 8 , 4 ։
Գ. Թագ. ժա. 12 ։
Գլ. լա. 9 , 26 ։ Տես Դ. Թագ. իբ. 8 ։
Յես. ա. 8 ։ Սաղ. ճժթ. 97 , 98 ։
Գլ. ե. 32 ։ Դ. Թագ. ժե. 5 ։
Թուոց. ժը. 20 ։ իգ. 62 ։ Գլ. ժ. 9 ։ Թուոց. ժը. 8 , 9 ։ Ա. Կոր. թ. 13 ։

հանայէն՝ կամ դատաւորին խօսքը
մտիկ չընէ , այն մարդը պիտի մեռ֊
նի , ու չարութիւնը Իսրայէլէն
13 վերցընես ։ Եւ բոլոր ժողովուրդը
լսելով՝ վախնայ , ու մէյմըն ալ հը֊
պարտութիւն չընէ ։
14 Երբոր քու Տէր Աստուծոյդ քե֊
զի տուած երկիրը մտնես , ու անոր
տիրելով՝ հոն բնակիս , ու ըսես .
Իմ բոլորտիքս եղող ամէն ազգե֊
րուն պէս ես ալ իմ վրաս թագա֊
15 ւոր մը դնեմ . Անպատճառ քու
Տէր Աստուծոյդ ընտրած մարդը
վրադ թագաւոր դնես . քու եղ֊
բայրներէդ մէկը վրադ թագաւոր
դնես . քու եղբայրդ չեղող օտա֊
րականը դնելու կարող չըլլաս ։
16 Սակայն չըլլայ որ անիկայ իրեն
համար ձիեր շատցընէ . ոչ ալ շատ
ձիեր ժողվելու համար՝ ժողո֊
վուրդը Եգիպտոս դարձընէ . ո֊
րովհետեւ Տէրը ձեզի ըսաւ որ՝
Մէյմըն ալ այն ճամբան չդառ֊
17 նաք ։ Նաեւ անիկայ իրեն կնիկ֊
ներ չշատցընէ , որ սիրտը չխո֊
տորի . ու իրեն համար խիստ շատ
18 արծաթ ու ոսկի չժողվէ ։ Եւ
իր թագաւորութեանը աթոռին
վրայ նստածին պէս , աս օրի֊
նաց գրքին օրինակը՝ Ղեւտացի
քահանաներուն քովը եղած օրի֊
նակէն՝ իրեն համար մէկ գիրքի
19 մը մէջ գրէ ։ Եւ անիկայ իր
քովը մնայ , ու իր կենացը բո֊
լոր օրերուն մէջ կարդայ . որպէս
զի իր Տէր Աստուծմէն վախնալ
սորվի , և աս օրէնքին բոլոր խօս֊
քերը , ու աս կանոնները զգուշու֊
20 թեամբ 'ի գործ դնէ . Որ իր սիր֊
տը իր եղբայրներուն վրայ չհպար֊
տանայ , ու աս պատուիրանքնե֊
րէն աջ դին կամ ձախ դին չխո֊
տորի . որ իր թագաւորութեանը
վրայ՝ երկար կեանք մը վայելէ Իս֊
րայէլի մէջ , թէ ինքը և թէ իր
որդիները ։

## ԳԼ. ԺԸ

*1 Քահանայից ու Ղեւտացւոց ժառանգութիւնը Տէրը պիտի ըլլայ ։ 3 Քահանայից իրաւունքը ։ 6 Ղեւտացւոց բաժինը ։ 9 Ազգաց պղծութիւններէն հեռու կենալու ։ 15 Քրիստոս Մարգարէին մտիկ ընելու ։ 20 ու սնապարծ մարգարէն մեռցընելու պատուէրը ։*

1 Ղեւտացի քահանաները՝ Ղեւին
բոլոր ցեղը՝ Իսրայէլին հետ
բաժին ու ժառանգութիւն չունե֊
նան . Տէրոջը պատարագները ու
անոր ժառանգութիւնը ուտեն ։
2 Վասն որոյ անոնք իրենց եղբայրնե֊
րուն մէջ ժառանգութիւն չունե֊
նան . անոնց ժառանգութիւնը
Տէրը ինքն է , ինչպէս որ անոնց
ըսաւ ։

3 Եւ աս պիտի ըլլայ քահանայից
իրաւունքը ժողովուրդին կողմէն՝
երբոր զոհ կը մատուցանեն , թէ
արջառ ըլլայ այն՝ և թէ ոչխար .
թիակը , ծնօտները ու քաղիրթը
4 քահանային պիտի տան ։ Քու
ցորենիդ՝ գինիիդ ու եղիդ երա֊
խայրիները՝ ու նաեւ ոչխարներուդ
առջի բուրդը՝ անոր պիտի տաս .
5 Վասն զի քու Տէր Աստուածդ՝
քու բոլոր ցեղերուդ մէջէն զանի֊
կայ ընտրեց , որ Տէրոջը անունո֊
վը ծառայութիւն ընելու կենայ ,
ինքը ու իր որդիքը ։
6 Ու երբոր Ղեւտացի մը քու քա֊
ղաքներուդ մէկէն՝ այսինքն՝ բոլոր
Իսրայէլին մէջ իր պանդխտացած
տեղէն ելլէ՝ ու իր սրտին փափա֊
քելովը Տէրոջը ընտրած տեղը
7 գայ , Ան ատենը հոն Տէրոջը առ֊
ջեւ կեցող բոլոր իր Ղեւտացի եղ֊
բայրներուն պէս՝ իր Տէր Աստու֊
ծոյն անունովը ծառայութիւն ը֊
8 նէ . Ու մէկալներուն հետ հաւա֊
սար բաժին պիտի ուտէ . ամէն
մէկուն իր հայրենական *ժառան֊
գութեանը գիներէն" զատ ։
9 Երբոր քու Տէր Աստուծոյդ քե֊
զի տուած երկիրը մտնես , Այն
ազգերուն գարշելի գործքերուն պէս
10 ընել չսորվիս ։ Ձեր մէջը չգտնուի
անանկ մարդ մը , որ իր տղան կամ
աղջիկը կրակէ անցընէ , կամ բաղդ
նայի , կամ գուշակութիւն , կամ
հմայութիւն և կամ դիւթութիւն
11 ընէ , Նաեւ կախարդ , կամ վհուկ ,
կամ նշանագէտ , կամ մեռելա֊
12 հմայ չգտնուի . Վասն զի ով որ
աս բաները կ'ընէ՝ Տէրոջը առջեւ
գարշելի է . Ու աս գարշելի բանե֊
րուն համար՝ քու Տէր Աստուածդ
քու առջեւէդ կը հալածէ զանոնք ։
13 Քու Տէր Աստուծոյդ առջեւ կա֊
14 տարեալ ըլլաս . Վասն զի այն ազ֊
գերը՝ որոնց դուն պիտի տիրես ,
գուշակներուն ու բաղդ նայողնե֊
րուն մտիկ կ'ընեն . բայց քու Տէր
Աստուածդ քեզի այսպէս ընելու
հրաման չտուաւ ։
15 Քու Տէր Աստուածդ քու եղ֊
բայրներուդ մէջէն ինծի պէս մար֊
գարէ մը պիտի հանէ քեզի , անոր
16 մտիկ ըրէք . Ինչպէս որ Քորեբ լեռը
ժողովքին օրը՝ քու Տէր Աստուծ֊
մէդ խնդրեցիր , ըսելով . Իմ Տէր
Աստուծոյս ձայնը մէյմըն ալ չը֊
լսեմ , ու աս մեծ կրակը մէյմըն ալ
17 չտեսնեմ , որ չմեռնիմ . Եւ Տէրը
ինծի ըսաւ , Ըսած խօսքերնին շի֊
18 տակ է . Քեզի պէս մարգարէ մը
պիտի հանեմ անոնց՝ իրենց եղ֊
բայրներուն մէջէն , և իմ խօսքերս
անոր բերանը պիտի դնեմ ու

Ն. Բ. ՂԲ.
1451

Ղեւ. է. 30—34 ։
Ել. իբ. 29 ։ Թուոց. ժը. 12 , 24 ։
Ել. իը. 1 ։ Թուոց. գ. 10 ։
Գլ. ժ. 8 ։ ժէ. 12 ։
Թուոց. լե. 2 , 8 ։
Գլ. ժբ. 5 ։
Բ. Մն. լա. 2 ։
Բ. Մն. լա. 4 ։ Նեեմ. ժբ. 44 , 47 ։
* Կամ՝ եկամուտներէն
Ղեւ. ժը. 26 , 27 , 30 ։ Գլ. ժբ. 29 , 30 , 31 ։
Ղեւ. ժը. 21 ։ Գլ. ժբ. 31 ։
Ղեւ. ժթ. 26 , 31 ։ ի. 27 ։ Ես. ը. 19 ։
Ղեւ. ի. 27 ։ Ա. Թագ. իը. 7 ։
Ղեւ. ժը. 24 , 25 ։ Գլ. թ. 4 ։
Յծն. ժէ. 1 ։
Հմր 18 ։ Յովհ. ա. 45 ։ Գործ. գ. 22 ։ է. 37 ։
Գլ. թ. 10 ։ Ել. ի. 19 ։ Եբր. ժբ. 19 ։
Գլ. ե. 28 ։
Հմր 15 ։ Յովհ. ա. 45 ։ Գործ. գ. 22 ։ է. 37 ։
Ես. ծա. 16 ։ Յովհ. ժէ. 8 ։
Յովհ. դ. 25 ։ ը. 28 ։ ժբ. 49 , 50 ։

Ն. Ք. ԴՌ. 1451

Հ Գործ. Գ. 23։
Գ Գլ. ԺԳ. 5։ Երեմ. ԺԴ. 14, 15։ Զաք. ԺԳ. 3։
Հ Գլ. ԺԴ. 1, 2։ Երեմ. Բ. 8։
Երեմ. ԻԸ. 9։
Տես ԴԼ. ԺԳ. 2։
Հ Հմր 20։

ինչ որ անոր պատուիրեմ, անոնց
19 պիտի զրուցէ ։ Եւ ով որ մտիկ
չընէ իմ խօսքերս, որ անիկայ իմ
անունովս պիտի խօսի, ան մարդէն
ես վրէժ պիտի խնդրեմ ։
20 Իսկ թէ որ մարգարէ մը յան-
դգնի իմ չպատուիրած խօսքս իմ
անունովս զրուցելու, կամ Օտար
աստուածներու անունովը բան մը
զրուցելու, ան մարգարէն պիտի
21 մեռնի ։ Եւ թէ որ դուն քու սըր-
տիդ մէջ ըսես թէ՝ Տէրոջը չխօ-
սած բանը ի՞նչպէս գիտնանք.
22 Թէ որ մէկ մարգարէ մը Տէրոջը
անունովը բան մը ըսէ, ու ան
բանը իրօք չկատարուի, Տէրոջը
չըսած խօսքը ան է. ան մարգարէն
յանդգնութեամբ զրուցեր է ան.
ու անկէ չվախնաս ։

## ԳԼ. ԺԹ

1 Ապաստանի քաղաքները ։ 4 Ի՞նչ իրաւունքով մարդասպանը անոնց մէկուն մէջ փախչելու էր ։ 14 Կալուածքին սահմանը պէտք էր որ անշարժ մնայ ։ 15 Գոնէ երկու մարդու վկայութեամբը պիտի վճռուէր ամէն դատաստան ։ 16 Սուտ վկայի մը պատիժը ։

Գլ. ԺԲ. 29։
Ելք. ԻԱ. 13։ Թուոց. ԼԵ. 10, 14։ Յես. Ի. 2։
Թուոց. ԼԵ. 15։ Գլ. Դ. 42։
Թուոց. ԼԵ. 12։

1 Երբոր քու Տէր Աստուածդ բնա-
ջինջ ընէ ան ազգերը՝ որոնց եր-
կիրը քու Տէր Աստուածդ քեզի
պիտի տայ, և դուն անոնք վռըն-
տելով՝ անոնց քաղաքներուն ու
2 տուներուն մէջ բնակիս, Քեզի ի-
րեք քաղաք զատես քու երկրիդ
մէջ՝ որն որ քու Տէր Աստուածդ
3 քեզի կու տայ ժառանգելու. Քեզի
ճամբայ պատրաստես, և քու Տէր
Աստուծոյդ քեզի ժառանգու-
թեան համար տուած քու երկրիդ
սահմանը՝ իրեքի բաժնես. որպէս
զի ամէն մարդասպան հոն փախչի ։
4 Եւ հոն փախչելու ու ողջ մնալու
մարդասպանին կանոնը աս է. Ան
մարդը որ երէկուընէ ու մէկալ
օրուընէ թշնամութիւն չունենա-
լով՝ անգիտութեամբ իր դրացին
5 մեռցընէ. Զոր օրինակ՝ թէ որ մէ-
կը իր դրացիին հետ անտառը երթայ
փայտ կտրելու համար, ու իր
ձեռքովը տապարը փայտ կտրելու
վերցուցած ատենը՝ երկաթը կոթէն
դուրս ցատկելով դրացիին հանդի-
պի, և զանիկայ մեռցընէ. անիկայ
աս քաղաքներէն մէկուն մէջ փախ-
6 չի, որ ապրի, Չըլլայ որ արեան
վրէժխնդիրը՝ սիրտը սրբելուն հա-
մար՝ մարդասպանին ետևէն իյնայ,
և ճամբան հեռու ըլլալով՝ անոր
հասնի ու զանիկայ մեռցընէ, թէ-
պէտ և մեռնելու արժանի չէր,
որովհետև երէկուընէ ու մէկալ օ-
րուընէ անոր դէմ թշնամութիւն
7 չունէր ։ Ասոր համար ես քեզի կը

պատուիրեմ ու կ՚ըսեմ, որ քեզի
իրեք քաղաք զատես ։
8 Եւ թէ որ քու Տէր Աստուածդ՝
քու հայրերուդ երդում ըրածին
պէս՝ քու սահմաններդ ընդար-
ձակէ, ու քու հայրերուդ խոստա-
ցած բոլոր երկիրները քեզի տայ,
9 Թէ որ պահես ու կատարես աս բո-
լոր պատուիրանքները՝ որ ես այսօր
քեզի կը պատուիրեմ, և քու Տէր
Աստուածդ սիրես, ու միշտ անոր
ճամբաներուն մէջը քալես, ան ա-
տենը աս իրեք քաղաքին վրայ ուրիշ
10 իրեք քաղաք ալ աւելցընես. Որ-
պէս զի քու երկրիդ մէջը՝ որն որ
քու Տէր Աստուածդ քեզի ժառան-
գութիւն պիտի տայ, անմեղ ա-
րիւն չթափուի. ու դուն արեան
պարտական չըլլաս ։
11 Բայց թէ որ մէկ մարդ մը իր
դրացիին ոխ ունենալով՝ անոր դա-
րանամուտ ըլլայ, ու անոր դէմ ել-
լելով՝ անիկայ զարնէ մեռցընէ, ու
ետքը աս քաղաքներուն մէկուն մէջ
12 փախչելու ըլլայ, Ան ատենը իր
քաղաքին ծերերը մարդ խրկեն, ու
զանիկայ անկէ առնեն, և արեան
վրէժխնդիրին ձեռքը տան, որ մեռ-
13 նի ։ Քու աչքդ անոր չխնայէ.
Ու Իսրայէլին մէջէն անմեղ արիւնը
վերցընես, որ քեզի աղէկ ըլլայ ։
14 Քու կալուածքիդ մէջը՝ որն որ
քու Տէր Աստուծոյդ քեզի ժառան-
գութիւն տուած երկրին մէջ պիտի
ժառանգես, չըլլայ որ փոխես քու
դրացիիդ սահմանը՝ որ առջինները նախա-
հայրերդ հաստատեցին ։
15 Մէկ մարդու մը որ և իցէ անօ-
րէնութեանը ու մեղքին համար՝ ո-
րով կրնայ յանցաւոր ըլլալ, մէկ
վկայ մը բաւական չսեպուի. եր-
կու կամ իրեք վկաներու բերնով
հաստատուի ամէն բան ։
16 Թէ որ մէկ մարդու մը դէմ
սուտ վկայ մը ելլէ, ու անոր վրա-
յովը անօրէնութեան մը համար
17 վկայէ, Ան ատենը ան երկու մար-
դիկը՝ որոնց մէջ հակառակու-
թիւնը կայ, Տէրոջը առջևը՝ ան
ան ժամանակի քահանաներուն ու
դատաւորներուն առջևը կայնին.
18 Եւ դատաւորները աղէկ մը քննեն.
և թէ որ ան վկան սուտ վկայ ըլ-
լալով՝ իր եղբօրը դէմ սուտ վկա-
19 յութիւն ըրեր է, Ան ատենը՝
ինչպէս որ անիկայ իր եղբօրը ընել
խորհեցաւ, նոյնը ըրէք անոր, ու
20 չարը ձեր մէջէն վերցուցէք. Եւ
ուրիշներն ալ լսելով՝ վախնան, ու
մէյմըն ալ ձեր մէջը անանկ դէշ
21 բան մը չընեն ։ Քու աչքդ չխնայէ.
կեանքի տեղ՝ կեանք, աչքի տեղ՝ աչք,
ակռայի տեղ՝ ակռայ, ձեռքի տեղ՝

Ն. Ք. ԴՌ. 1451

Ելից. ԺԵ. 18։ Գլ. ԺԲ. 20։
Յես. Ի. 7, 8։
Ելք. ԻԱ. 12, 14։ Թուոց. ԼԵ. 16, 24։ Գլ. ԻԷ. 24։ Առակ. ԻԸ. 17։
Գլ. ԺԳ. 8։ ԻԵ. 12։
Թուոց. ԼԵ. 33, 34։ Գլ. ԻԱ. 9։ Թագ. Բ. 31։
Գլ. ԻԷ. 17։ Յոբ. ԻԴ. 2։ Առակ. ԻԲ. 28։ Ովս. Ե. 10։
Թուոց. ԼԵ. 30։ Գլ. ԺԷ. 6։ Մատ. ԺԸ. 16։ Յովհ. Ը. 17։ Բ Կոր. ԺԳ. 1։ Ա Տիմ. Ե. 19։ Եբր. Ժ. 28։
Եբր. չըլլայ՝ կայ՝ չկենայ.
Սաղ. ԻԵ. 12։ ԼԵ. 11։
Գլ. ԺԷ. 9։ ԻԱ. 5։
Առակ. ԺԹ. 5, 9։ Դան. Զ. 24։
Գլ. ԺԳ. 5։ ԺԷ. 7։ ԻԱ. 21։ ԻԲ. 21, 24։ ԻԴ. 7։
Գլ. ԺԷ. 13։ ԻԱ. 21։
Հմր 13։
Ելք. ԻԱ. 23։ Ղև. ԻԴ. 20։ Մատ. Ե. 38։

Ն. ք. գ. Ք. 1451

ձեռք, ու ոտքի տեղ՝ ոտք պէտք
տրուի ։

## ԳԼ. Ի

1 Քահանաները պիտի քաջալերեն ժողովուրդը՝ պատերազմի ժամանակ ։ 5 Ոստիկաններուն քարոզ կարդալովը ո՛վ կրնար պատերազմէն ետ դառնալ ։ 10 Խաղաղութեան հրաւէրքը ընդունող կամ մերժող քաղաքներուն հետ ինչպէս պէտք էր վարուիլ ։ 16 Ո՛ր քաղաքները պէտք էր կորսնցընել ։ 19 Պաշարման ժամանակ պտղաբեր ծառերը չկտրելու վրայով պատուէր ։

1 Երբոր քու թշնամիներուդ դէմ
պատերազմելու ելլես, ու ա ձիեր և կառքեր ու քեզմէ շատ
ժողովուրդ տեսնես, անոնցմէ չըվախնաս. վասն զի Եգիպտացւոց երկրէն հանող քու Տէր
2 Աստուածդ քու հետդ է ։ Ու երբոր պատերազմի մօտենաս, քահանան մօտենալով՝ ժողովուրդին
3 պիտի խօսի, Ու անոնց ըսէ. Ո՛վ
Իսրայէլ՝ մտիկ ըրէ. այսօր դուք ձեր թշնամիներուն դէմ պատերազմելու կը մօտենաք. սրտերնիդ չթուլնայ, մի՛ վախնաք, մի՛ զարհուրիք, ու անոնց երեսէն մի՛ դո-
4 ղաք. Վասն զի ձեր Տէր Աստուածը ձեզի հետ կ՚երթայ, գ ձեզի համար ձեր թշնամիներուն դէմ պատերազմելու, և ձեզ ազատելու ։
5 Ան ատենը ոստիկանները ժողովուրդին խօսելով՝ պիտի ըսեն.
Ո՛վ որ նոր տուն շիներ է, ու դ անոր նաւակատիքը չէ ըրեր, երթայ իր տունը դառնայ. չըլլայ որ պատերազմին մէջը մեռնի, և ուրիշ մէկը
6 նաւակատիքը ընէ. Եւ ո՛վ որ այգի տնկեր է, ու անոր պտուղէն դեռ ե չէ կերած, երթայ իր տունը դառնայ. չըլլայ որ պատերազմին մէջը մեռնի, ու անոր առջի պտու-
7 ղը ուրիշ մարդ մը ուտէ ։ Նաեւ ով
որ կնկան մը նշանուած է, ու զանիկայ չէ առած, երթայ իր տունը դառնայ. չըլլայ որ պատերազմին մէջը մեռնի, ու զանիկայ մէկ ուրիշ
8 մարդ մը առնէ ։ Եւ ոստիկանները իրենց խօսքը շարունակելով՝ պիտի ըսեն ժողովուրդին. ե Ո՛վ որ վախկոտ ու թուլասիրտ է, թող երթայ՝ իր տունը դառնայ. չըլլայ որ իր եղբայրներուն սիրտն ալ իր
9 սրտին պէս թուլցընէ ։ Ու երբոր ոստիկանները՝ ժողովուրդին առջեւ իրենց խօսքը լմնցընեն, * ժողովուրդին վրայ զօրապետներ կարգեն" ։
10 Երբոր մէկ քաղաքի մը կը մօտենաս՝ անոր հետ պատերազմելու համար, է զանիկայ խաղաղութեան
11 հրաւիրէ ։ Թէ որ քեզի խաղաղութեան պատասխան տալու ըլլայ, ու դռները քեզի բանայ, մէջը գըտնուած բոլոր ժողովուրդը քեզի հարկատու ըլլան, ու քեզի ծա-
12 ռայութիւն ընեն ։ Բայց թէ որ
քեզի հետ խաղաղութիւն ընել չուզէ, ու պատերազմ ընէ, ան ա-
13 տենը անիկայ պաշարես. Ու երբոր
քու Տէր Աստուածդ քու ձեռքդ մատնէ զանիկայ, ը անոր բոլոր արուները սուրի բերնէ անցընես.
14 Բայց կնիկները, տղաքները ու ա՛նասունները՝ և ինչ որ կայ ան քաղաքին մէջը, անոր բոլոր աւարը քեզի համար առնես. և է քու Տէր Աստուծոյդ քեզի մատնած քու թշնամիներուդ աւարը ուտես ։
15 Ահա՛ ասանկ պիտի ընես քեզմէ խիստ
հեռու եղող ամէն քաղաքներուն, որ աս ազգերուն քաղաքներէն չեն ։
16 Սակայն ը քու Տէր Աստուծոյդ քեզի
ժառանգութիւն տուած աս ազգերուն քաղաքներուն մէջ՝ բնաւ շունչ ունեցող մը ողջ չթողուս.
17 Վասն զի Քետացիները՝ Ամօրհացիները՝ Քանանացիները՝ Փերեզացիները՝ Խեւացիները ու Յեբուսացիները բոլորովին պիտի կորսնցընես, ինչպէս որ քու Տէր Աս-
18 տուածդ քեզի պատուիրեց. Որպէս
զի ժ ձեզի չսորվեցընեն իրենց բոլոր գարշութիւններուն համեմատ ընել, ինչպէս որ անոնք իրենց աստուածներուն կ՚ընեն. ու դուք ծ Տէրոջը ձեր Աստուծոյն առջեւ մեղք չգործէք ։
19 Երբոր մէկ քաղաքի մը դէմ պատերազմիս, ու զանիկայ առնելու համար՝ երկար ժամանակ պաշարելու ըլլաս, անոր ծառերուն տապար չզարնես, ու զանոնք չաւրես. ինչու որ անոնցմէ պիտի ուտես. ու բե՛ն անոնք չկտրես. քանզի դաշտին ծառը † մարդ է որ քու երեսէդ
20 պաշարման մէջ մտնէ" ։ Բայց ան
ծառերը՝ որոնք կը ճանչնաս թէ ուտուելու պտուղ չեն բերեր, անոնք աւրես ու կտրես, և քեզի հետ պատերազմող քաղաքին դիմացը՝ անոնցմով պատնէշներ շինես, մինչև որ անիկայ նուաճի ։

## ԳԼ. ԻԱ

1 Անյայտ մարդասպանութեան մը քաւութիւնը ։ 10 Կնութեան առնուած գերիին հետ վարուելուն կերպը ։ 15 Երկանը ատելի եղող կնիկէն ծնած անդրանիկ տղան՝ իր անդրանկութեան ժառանգութենէն պիտի չզրկուէր ։ 18 Կամակոր զաւակը քարկոծուելով մեռցուելու էր ։ 22 Չարագործին մարմինը բոլոր գիշերը ծառէ կախուած պիտի չմնար ։

1 Թէ որ քու Տէր Աստուծոյդ քեզի
ժառանգութիւն տուած երկրին մէջ՝ դաշտի վրայ ինկած ա մեռցուած մարդ մը գտնուի, ու անի-
2 կայ զարնողը չգիտցուի. Ան ատենը

Marginal references:
ա Տես Սաղ. Ի. 7 ։ Եսա. ԼԱ. 1 ։
բ Թուոց. ԻԴ. 21 ։ Գլ. ԼԱ. 6, 8 ։ ԲՄն. ԺԳ. 12 ։ ԼԲ. 7, 8 ։
գ Գլ. Ա. 30 ։ Գ. 22 ։ Յեսու. ԻԳ. 10 ։
դ Տես Նեեմ. ԺԲ. 27 ։ Սաղ. Լ. ին վերնագիրը ։
ե Տես Ղև. ԺԹ. 23, 24 ։ Գլ. ԻԸ. 30 ։
զ Գլ. ԻԴ. 5 ։
է Դատ. Է. 3 ։
" Կամ՝ զօրապետները ժողովուրդին գլուխը անցնին ։
ը Թուոց. Ի. 18, 20 ։
ը Թուոց. ԼԱ. 7 ։
ժ Յեսու. Ը. 2 ։
է Յեսու. ԻԲ. 8 ։
ը Թուոց. ԻԱ. 2, 3, 35 ։ ԼԴ. 52 ։ Գլ. Է. 1, 2 ։ Յես. ԺԱ. 14 ։
ժ Գլ. Է. 4 ։ ԺԲ. 30, 31 ։ ԺԸ. 9 ։
ծ Ել. ԻԳ. 33 ։
† Կամ՝ մարդու պէս քեզի օգնութեան կը հասնի պաշարմանդ մէջ ։

Ն. Ք. ԴՔ.
1451

քու ծերերդ ու դատաւորներդ ել-
լեն, և մեռցուած մարդուն եղած
տեղէն մինչև շրջակայ քաղաքները
3 չափեն. Ու մեռցուածին մօտ եղող
քաղաքին ծերերը՝ արջառներէն
չգործածուած ու լուծի տակ չմը-
4 տած երինջ մը առնեն. Եւ այն
քաղաքին ծերերը՝ երինջը մէկ
չհերկուած ու չցանուած ապառաժ
ձոր մը իջեցընեն, ու այն ձորին մէջ
5 երինջին վիզը կտրեն։ Եւ Ղեւիին
որդիքը քահանաները մօտենան.
վասն զի ᵃքու Տէր Աստուածդ
զանոնք ընտրեց իրեն ծառայու-
թիւն ընելու, ու Տէրոջը անու-
նովը օրհնելու համար. և ամէն վէճ
ու ամէն վէրք ᵇանոնց խօսքովը
6 պիտի դատուի։ Եւ այն մեռցուա-
ծին մօտ եղող քաղաքին բոլոր
ծերերը՝ ձորին մէջ վիզը կտրած
երինջին վրայ ᶜձեռքերնին լուան,
7 Եւ պատասխան տալով ըսեն. Մեր
ձեռքերը չթափեցին աս արիւնը,
8 ու մեր աչքերը չտեսան. Ո՛վ Տէր,
քաւէ՛ քու Իսրայէլ ժողովուրդդ,
որն որ դուն փրկեցիր, ᵈու անմեղ
արիւնը քու Իսրայէլ ժողովուրդիդ
մի՛ սեպեր. այսպէս այն արեանը
համար քաւութիւն պիտի ըլլայ
9 անոնց. Իսկ դուն Տէրոջը առջեւ
ուղիղ եղածը ընելով՝ ᵉանմեղ ա-
րիւնը քեզմէ վերցընես։
10 Երբոր քու թշնամիներուդ դէմ
պատերազմի ելլես, և քու Տէր Աս-
տուածդ զանոնք քու ձեռքդ տայ,
11 ու անոնցմէ գերիներ առնես, Եւ
գերիներուն մէջէն դեղեցիկ տեսքով
կնիկ մը տեսնես, ու զանիկայ սիրե-
լով՝ քեզի կնիկ առնելու ըլլաս,
12 Զանիկայ քու տունդ տանիս, և
անիկայ իր գլուխը ածիլէ, ու իր
13 եղունգները կտրէ. Եւ իր վրայէն
գերութեան լաթերը հանէ, ու քու
տունդ նստի, և ᶠամբողջ ամիս մը
իր հօրը ու մօրը համար լայ. ու
անկէ ետև անոր մօտենաս, և դուն
անոր էրիկը ըլլաս, ու այն ալ քու
14 կնիկդ ըլլայ։ Թէ որ անկէ գոհ
չըլլաս, անիկայ ազատ պիտի ար-
ձակես. բայց ստակով բնաւ չծա-
խես, ոչ ալ ծառայեցընես, որով-
հետև ᵍլլկեցիր զանիկայ։
15 Թէ որ մէկ մարդ մը երկու կնիկ
ունենայ, ու մէկը սիրելի ʰև մէկա-
լը ատելի ըլլայ. ու սիրելին ալ և
ատելին ալ անոր զաւակներ ծնա-
նին, և թէ որ անդրանիկ զաւակը՝
16 ատելի կնիկէն ծնած է, ⁱԻր ստա-
ցուածքը որդւոցը բաժնելու օրը՝
կարող չըլլայ սիրելիին զաւակը
անդրանկացընելու, ու ատելիէն
ծնած անդրանիկը երեսէ ձգելու.
17 Հապա ատելիին զաւակը անդրանիկ

ա Գլ. Ժ. 8։ ա Մն. Իգ. 13։
բ Գլ. ԺԷ. 8, 9։
գ Տեմ Սաղ. ԺԹ. 12։ Իղ. 6։ Մատ. ԻԷ. 24։
դ Յովն. Ա. 14։
ե Գլ. ԺԹ. 13։
զ Տես Սաղ. ԽԵ. 10։
է Ծն. ԼԴ. 2։ Գլ. ԻԲ. 29։ Դատ. ԺԹ. 24։
ը Ծն. ԻԹ. 33։
թ Ա Մն. Ե. 2։ Իղ. 10։ Բ Մն. ԺԱ. 19, 22։

ճանչնալով՝ բոլոր իր ʲձեռքը գըտ-
նուածէն՝ երկու բաժին տայ անոր.
վասն զի ᵏիր զօրութեանը սկիզբը
անիկայ է. ˡանդրանկութեան ի-
րաւունքը անոր կը վերաբերի։
18 Թէ որ մէկ մարդ մը՝ անզգամ ու
անհնազանդ տղայ մը ունենայ, որ իր
հօրը ու իր մօրը խօսքը բնաւ մտիկ
չըներ, ու երբոր զանիկայ խրատեն,
19 անոնց չհնազանդիր. Այն ատենը ա-
նոր հայրը ու մայրը զանիկայ բռնե-
լով, քաղաքին ծերերուն, ու անոր
20 ᵐբնակած տեղին դուռը հանեն. Եւ
քաղաքին ծերերուն ըսեն. Աս մեր
տղան անզգամ ու անհնազանդ է,
մեր խօսքը մտիկ չըներ, որկրամոլ
21 ու գինեմոլ է. Այն ատենը անոր
քաղաքին բոլոր մարդիկները՝ քա-
րերով քարկոծեն զանիկայ, որ
մեռնի. ⁿու չարութիւնը ձեր մէ-
ջէն վերցընես. ᵒև բոլոր Իսրայէլը
լսելով՝ վախնան։
22 Երբոր մէկ մարդ մը ᵖմահու ար-
ժանի մեղք մը գործէ, և զանիկայ
մեռցընելու համար ծառէ մը կա-
23 խես, ᵠԱնոր մարմինը ծառին վրայ
գիշերը չմնայ. հապա նոյն օրը ան-
պատճառ թաղես անիկայ. վասն զի
ʳկախուածը՝ ˢԱստուծոյ անիծածն
է. ու ᵗչպղծես այն երկիրը՝ որն որ
քու Տէր Աստուածդ քեզի կու-
տայ ժառանգելու համար։

ԳԼ. ԻԲ

1 Մարդասիրութիւն ընելու վրայով պատուէր։ 5 Մարդը ու կնիկը իրենց հագուստովը պիտի տարբերէին։ 6 Թռչունը իր պզտիկ ձագերովը մէկտեղ չառնելու, 8 տունի մը տանիքին բոլորտիքը շրջանակ մը շինելու. 9 խառնակութենէ հեռանալու, 12 և հանդերձի վրայ ծոպեր դնելու պատուէրներ։ 13 Իր կնկանը համար զրպարտութիւն ընողին. 20, 22 շնացողին. 25 կոյս լլկողին, 28 ու պոռնկութիւն ընողին պատիժը։ 30 Ազգապղծութիւնը կ'արգիլուի։

1 ᵃԵրբոր տեսնես որ եղբօրդ եզը
կամ ոչխարը իր ճամբայէն
խոտորեր է, անոնք անտես չընես.
անպատճառ զանոնք քու եղբօրդ
2 պիտի դարձընես։ Բայց թէ որ
քու եղբայրդ քեզի մօտ չէ, կամ
զանիկայ չես ճանչնար, այն ատենը
քու տունդ առնես այն, ու մինչև
քու եղբօրդ զանիկայ փնտռելը՝
քու քովդ թող կենայ. ետքը զա-
3 նիկայ անոր դարձընես։ Անոր ի-
շուն ալ ասանկ ընես, գգեստին ալ
ասանկ ընես. Նաև եղբօրդ ամէն
կորսուած բանը՝ որ դուն կը գըտ-
նես, ասանկ ընես. չըլլայ որ զա-
նոնք անտես ընես։
4 ᵇԵրբոր տեսնես որ եղբօրդ էշը
կամ եզը ճամբուն վրայ ինկեր է,
անոնք անտես չընելով՝ անպատ-
ճառ անոր հետ վերցընես։

Ն. Ք. ԴՔ.
1451

ժ Տես Ա Մն. Ե. 1։
ի Ծն. ԽԹ. 3։
լ Ծն. ԻԵ. 31, 33։
խ Գլ. ԺԳ. 5։ ԺԹ. 19։ 20։ ԻԲ. 21, 24։
ծ Գլ. ԺԳ. 11։
կ Գլ. ԺԹ. 6։ ԻԲ. 26։ Գոր. Իգ. 29։ ԻԵ. 11, 25։ Իզ. 31։
հ Յես. Է. 29։ Ժ. 26, 27։ Յոհ. ԺԹ. 31։
ձ Գաղ. Գ. 13։
ղ Տես Թու. ԻԵ. 4։ Բ Թագ. ԻԱ. 6։
ճ Ղև. ԺԸ. 25։ Թու. ԼԵ. 34։

ա Ել. Իգ. 4։

բ Ել. Իգ. 5։

Ն. Ք. Գ.Ճ. 1451

5 կնկան մը վրայ էրիկ մարդու
հագուստ չըլլայ, ու էրիկ մարդը
կնկան հագուստ չհագնի. քանզի
ով որ ասոնք կ՚ընէ, քու Տէր Աս-
տուծոյդ առջեւը պիղծ է։
6 Թէ որ ճամբան ծառի մը վրայ
կամ գետնի վրայ՝ ձագերով կամ
հաւկիթներով թռչունի մը բոյն
հանդիպի քու առջեւդ, ու մայրը
ձագերուն կամ հաւկիթներուն վը-
րայ նստած ըլլայ, Ա մայրը իր ձա-
7 գերովը մէկտեղ չառնես. Անպատ-
ճառ մայրը արձակես, ու ձագերը
քեզի առնես. Բ որպէս զի աղէկ
ըլլայ քեզի, ու կեանքդ երկայն ըլ-
լայ։
8 Նոր տուն շինած ատենդ՝ տանի-
քիդ բոլորտիքը շրջանակ մը շինես,
որ չըլլայ թէ մէկը անկէ վար իյ-
նայ, ու քու տունդ արեան պար-
տական ընես։
9 Գ Այգիիդ մէջ այլ և այլ սերմեր
չցանես, որ ցանած սերմիդ ար-
դիւնքը ու այգիիդ բերքը չպղծ-
10 ուի։ Դ Եզ մը ու էշ մը մէկտեղ
իրիկը հերկելու չգործածես։
11 Ե Բուրդով ու քթանով գոր-
ծուած այլայլախառն հանդերձ չը-
հագնիս։
12 Զ Հագած հանդերձիդ չորս ծայրը
ծոպեր շինես։
13 Թէ որ մէկ մարդ մը կնիկ առնէ,
ու Է անոր մօտենալէն ետքը՝ զանի-
14 կայ ատէ, Եւ անոր վրայ զրպար-
տութեան խօսքեր դնելով՝ անոր
անունը գէշ հանէ, ու ըսէ. Ես
աս կնիկը առի, բայց երբոր անոր
մօտեցայ, անոր վրայ կուսութիւն
15 չգտայ. Ան ատենը աղջկանը հայ-
րը ու մայրը՝ աղջկանը կուսութեան
նշանը առնեն, և դուրս հանեն քա-
16 ղաքին ծերերուն առջեւը. Ու աղ-
ջըկան հայրը ծերերուն պիտի ըսէ.
Իմ աղջիկս աս մարդուն կնիկ տուի,
17 ու ատելով զանիկայ, Ահա անոր
վրայ զրպարտութեան խօսքեր կը
դնէ, ըսելով թէ՝ Ես քու աղջը-
կանդ վրայ կուսութիւն չգտայ.
բայց ահա իմ աղջկանս կուսու-
թեան նշանը. և լաթը քաղաքին
ծերերուն առջեւը պիտի փռեն։
18 Ետքը ան քաղաքին ծերերը ան
մարդը առնեն, ու զանիկայ * պատ-
19 ժեն, Եւ Իսրայէլացի կոյս աղջկան
անունը աւրելուն համար՝ անկէ
հարիւր սիկղ արծաթ տոյժ առնեն,
ու աղջկանը հօրը տան. և անիկայ
անոր կնիկը ըլլայ. ու իր բոլոր կե-
նացը մէջ կարող չըլլայ զանիկայ
20 արձակելու։ Բայց թէ որ աս բա-
նը ստոյգ է, ու աղջկանը վրայ կու-
21 սութիւն չէ գտնուեր, Ան ատենը
աղջիկը իր հօրը տանը դուռը հա-

Ա Ղեւ. իբ. 28.
Բ Գլ. դ. 40.
Գ Ղեւ. ժթ. 19.
Դ Տե՛ս Բ Կոր. զ. 14. 15. 16.
Ե Ղեւ. ժթ. 19.
Զ Թւ. ժե. 38. Մատ. իգ. 5.
Է Ծն. իթ. 21. Դատ. ժե. 1.
* Կամ՝ յանդիմանեն.

նեն, ու անոր քաղաքին մարդիկ-
ները քարերով քարկոծեն զանի-
կայ, որ մեռնի. որովհետեւ Ը Իս-
րայէլի մէջ անզգամութիւն ընելով՝
իր հօրը տանը պոռնկութիւն ըրեր
է. Թ Աս կերպով չարութիւնը ձեր
մէջէն վերցընես։
22 Ժ Եթէ որ մէկը՝ էրիկ ունեցող կըն-
կան մը հետ պառկած գտնուի, ան
ատենը երկուքն ալ մեռնին, թէ
ան կնկանը հետ պառկող մարդը՝
և թէ ան կնիկը. ու Իսրայէլէն
չարութիւնը վերցընես։
23 Թէ որ մէկ կոյս աղջիկ մը Ի մար-
դու մը նշանած ըլլայ, ու մէկ մարդ
մը քաղաքի մէջ գտնելով զանիկայ՝
24 անոր հետը պառկի, Երկուքն ալ
ան քաղաքին դուռը հանէք, ու
զանոնք քարերով քարկոծէք, որ
մեռնին. աղջիկը՝ քանզի քաղաքին
մէջ ըլլալով չկանչուըռտեց. և
մարդը՝ քանզի Լ իր դրացիին կնիկը
լլկեց. Խ ու չարութիւնը ձեր մէջէն
վերցընես։
25 Բայց թէ որ մէկ մարդ մը նշա-
նած աղջիկ մը դաշտի մէջ գտնէ,
ու Ծ զանիկայ բռնադատելով անոր
հետ պառկի, ան ատենը անոր հետ
26 պառկող մարդը միայն մեռնի։ Եւ
աղջըկին բան մը չընես. աղջիկը
մահու արժանի յանցանք մը չունի.
վասն զի ինչպէս որ մէկը իր դրա-
ցիին վրայ կը յարձակի, ու զանի-
կայ կը մեռցընէ, աս գիպուածն
27 ալ այնպէս է։ Քանզի դաշտի մէջ
գտաւ զանիկայ. ու թէև նշանած
աղջիկը կանչուըռտեց, բայց զինքը
ազատող մը չկար։
28 Կ Թէ որ մէկ մարդ մը չնշանուած
կոյս աղջիկ մը գտնէ, և զանիկայ
բռնադատելով՝ անոր հետ պառկի,
29 ու Հ բանը իմացուի. Ան ատենը
անոր հետ պառկող մարդը՝ աղջը-
կանը հօրը յիսուն սիկղ արծաթ
պիտի տայ, ու անիկայ իր կնիկը
ըլլայ. Որովհետեւ լլկեց զանիկայ,
իր բոլոր կենացը մէջ զանիկայ
արձակելու կարող չըլլայ։
30 Չըլլայ որ Ձ մէկ մարդ մը իր հօրը
կնիկը առնէ, ու Ղ իր հօրը քղանց-
քը բանայ։

ԳԼ. ԻԳ.

1 Ով կրնար ժողովքին մէջ մտնել՝ ու ով չէր կրնար։ 9 Բանակին մէջ անմաքրութիւնը կ՚արգիլուի։ 15 Իր տիրոջմէն փախչող ծառային վրայով։ 17 Պոռնկութեան վրայով։ 18 Պիղծ ընծաներու վրայով։ 19 Շահով ստակ տալու վրայով։ 21 Ուխտերու վրայով։ 24 Ցանցանքներու վրայով։

1 Ամորձիքը ճզմուած կամ կըտ-
րուած մարդը Տէրոջը ժողովքը
չմտնէ։

Ն. Ք. Գ.Ճ. 1451

Ը Ծն. լդ. 7. Դատ. ի. 6. 10. Բ Թագ. ժգ. 12. 13.
Թ Գլ. ժգ. 5.
Ժ Ղեւ. ի. 10. Յովհ. ը. 5.
Ի Մատ. ա. 18. 19.
Լ Գլ. իա. 14.
Խ Հմր 21. 22.
Ծ Բ Թագ. ժգ. 14.
Կ Ել. իբ. 16. 17.
Հ Եբր. գլուխն.
Ձ Հմր 24. Ղեւ. ժը. 8. ի. 11. Գլ. իէ. 20. Ա Կոր. ե. 1.
Ղ Տե՛ս Հռութ. գ. 9. Եզեկ. ժզ. 8.

Ն · Ք · ԶՓ ·
1451

2 Պոռնկորդին Տէրոջը ժողովքը
չմտնէ · ու անոր ա տասներորդ ազգը՝ մինչև
տասներորդ ազգը՝ Տէրոջը ժողով-
քը չմտնէ ։
3 ᵃԱմմոնացին ու Մովաբացին
Տէրոջը ժողովքը չմտնէ · ու մինչև
անոնց տասներորդ ազգը՝ անոնց ա-
ազգը Տէրոջը ժողովքը չմտնէ յա-
4 ւիտեան · ᵇՔանզի երբոր դուք Ե-
գիպտոսէն ելաք, ճամբուն մէջ
հացով ու ջրով ձեզ չդիմաւորե-
ցին · ու Միջագետքին Փաթուրէ ա-
ղաէն՝ ᶜԲէովրի որդին Բաղաամը
վարձքով բերել տուին, որ քեզ
5 անիծէ · Բայց քու Տէր Աստուածդ
չուզեց Բաղաամին մտիկ ընել · հա-
պա քու Տէր Աստուածդ անէծքը
քեզի օրհնութեան դարձուց, որով-
հետև քու Տէր Աստուածդ քեզ
6 սիրեց ։ ᵈՔու բոլոր կենացդ մէջ
անոնց խաղաղութիւնը ու աղէ-
կութիւնը չփնտռես յաւիտեան ։
7 Չըլլայ որ Եդովմայեցին ատես ·
ᵉքանզի անիկայ քու եղբայրդ է ։
Եգիպտացին ալ չատես · քանզի
դանոր երկրին մէջ պանդուխտ է-
8 իր ։ Ասոնց ծնած զաւակներուն
երրորդ ազգը՝ Տէրոջը ժողովքը
թող մտնեն ։
9 Երբոր թշնամիներուդ դէմ բա-
նակով կ'երթաս, ամէն չար բանէն
10 զգուշանաս ։ ᶠԹէ որ ձեր մէջը մէկ
մարդ մը՝ երազափորձութեան պատ-
ճառաւը մաքուր չէ, թող բանա-
կէն դուրս ելլէ, ու բանակին մէջը
11 չմտնէ · Եւ իրիկուան դէմ ᵍջրով
լուացուի, ու արեւը մտածին պէս
12 բանակին մէջը մտնէ ։ Նաև բանա-
կէն դուրս մէկ տեղ մը ունենաս,
13 որ հոն դուրս ելլես · Ու զէնքերուդ
մէջը ցից մը ունենաս, որ երբոր
դուրսը նստելու ըլլաս, անով փո-
րես, ու դառնաս՝ քու յաւելուա-
14 ծըդ ծածկես ։ Քանզի քու Տէր
Աստուածդ՝ քեզ ազատելու հա-
մար, ու քու թշնամիներդ քու
ձեռքդ մատնելու համար՝ ʰքու
բանակիդ մէջը կը քալէ · ուստի
քու բանակդ մաքուր ըլլայ, որ ա-
նիկայ քու վրադ աղտեղութիւն մը
տեսնելով՝ քեզմէ ետ չդառնայ ։
15 ⁱԾառայ մը՝ որ տիրոջմէն փա-
խչելով քու քովդ ապաստաներ է,
16 իր տիրոջը ձեռքը չմատնես · Թող
քեզի հետ բնակի իր հաւնած տե-
ղը՝ քու քաղաքներուդ մէկուն
մէջ՝ ուր որ ինքը կ'ուզէ · ʲԵւ չզա-
նիկայ չնեղես ։
17 ᵏԻսրայէլի աղջիկներէն բոզ չըլ-
լայ ; ու Իսրայէլի տղոցմէն ˡիգա-
18 ցեալ չըլլայ ։ Որ և իցէ ուխտի հա-
մար՝ բոզի վարձքը կամ շունի գինը
քու Տէր Աստուծոյդ տունը չտա-
նիս · քանզի քու Տէր Աստուծոյդ
առջեւը երկուքն ալ պիղծ են ։
19 ᵐՍտակը կամ ուտելիքը՝ և կամ
որ և իցէ բանը՝ որ շահով կրնայ
տրուիլ, քու եղբօրդ շահով չը-
20 տաս · ⁿՕտարականէն շահ առնես,
բայց քու եղբօրմէդ շահ չառնես,
ᵒոր քու Տէր Աստուածդ քու ա-
մէն ձեռք զարկած գործքերուդ մէջ
քեզ օրհնէ այն երկրին վրայ, ուր որ
պիտի մտնես անիկայ ժառանգելու
համար ։
21 ᵖԵրբոր քու Տէր Աստուծոյդ
ուխտ մը ընես, առանց ուշացընե-
լու կատարես · քանզի քու Տէր Աս-
տուածդ անպատճառ անիկայ քեզ-
մէ պիտի պահանջէ, ու մեղքի տէր
22 պիտի ըլլաս · Բայց թէ որ ուխտ
ընել չուզես, ան քեզի մեղք չըլ-
23 լար ։ ᵠԻ՛նչ որ բերնովդ կը խոս-
տանաս, ու քու կամօքդ քու Տէր
Աստուծոյդ կ'ուխտես, քու շըր-
թունքներէդ ելածը զգուշութեամբ
կատարես ։
24 Երբոր քու դրացիիդ այգին կը
մտնես, ուզածիդ չափ խաղող ու-
տես ու կշտանաս, բայց ամանիդ
25 մէջը չդնես ։ Երբոր քու դրացիիդ
հունձքին մէջը կը մտնես, ʳձեռ-
քովդ հասկերը փրցընես, բայց
դրացիիդ հունձքին մանգաղ չզար-
նես ։

ԳԼ · ԻԴ

1 Արձակման թուղթ տալու վրայով ։ 5 Նոր կարգուած մարդ մը պատերազմի երթալու չէր ։ 6, 10 Գրաւներու վրայով ։ 7 Մարդ գողցողին պատիժը ։ 8 Բորոտութեան համար զգուշութիւն ընելու պատուէրը ։ 14 Բանուորին վարձքը հատուցանելու, 16 արդարութիւն ընելու, 19 ու ողորմած ըլլալու վրայով պատուէր ։

1 Թէ որ ᵃմէկը կնիկ մը առնէ՝ ու
անոր էրիկը ըլլայ, և անոր վրայ
անարգութեան բան մը գտնելուն
համար, անիկայ իր աչքին հաճոյ
չըլլայ, ան ատենը անոր արձակման
թուղթ մը գրէ, ու անոր ձեռքը
2 տայ, և իր տունէն ճամբէ ։ Ու
երբոր անիկայ անոր տունէն ելլե-
լով, երթայ ուրիշ էրկան մը կնիկ
3 ըլլայ, Թէ որ ետքի էրիկն ալ զա-
նիկայ ատելով, արձակման թուղթ
մը գրէ, ու անոր ձեռքը տալով՝ իր
տունէն ճամբէ, կամ թէ որ անոր
հետ կարգուած ետքի էրիկը մեռ-
4 նի, ᵇԱռջի էրիկը՝ որ զանիկայ
ճամբեր էր, կարող չըլլայ զանիկայ
դարձեալ իրեն կնիկ առնելու, ա-
նոր պղծուելէն ետքը · քանզի Տէ-
րոջը առջեւը պղծութիւն է աս
բանը · և այսպէս դուն մեղքով չըլ-
ցընես այն երկիրը, որն որ քու Տէր
Աստուածդ քեզի ժառանգութիւն
կու տայ ։

Margin references (left): ᵃՆեեմ. ժգ. 1, 2 · ᵇՏեւ. գլ. ր. 29 · ᶜԹուոց իր. 5, 6 · ᵈԵզր. Թ. 12 · ᵉԾն. իե. 24, 25, 26 · Աբդ. 10, 12 · ᶠՂեւ. իր. 21 · իգ. 9 · Ղև. ժթ. 34 · Գլ. ժ. 19 · ᵍՂև. ժե. 16 · ʰՂև. ժե. 5 · ⁱԲ Ղև. իզ. 12 · ʲԺա Թագ. Լ. 15 · ᵏԵւ. իր. 21 · ˡՂև. ժթ. 29 · Տես Աստկ. Ր. 16 · ᵐԾն. ժթ. 5 · Դ Թագ. իգ. 7

Margin references (right): Ն · Ք · ԶՓ · 1451 · ᵐԵւ. իր. 25 · Ղև. իե. 36, 37 · Նեեմ. ե. 2, 7 · Սաղ. ժե. 5 · Ղու. զ. 34, 35 · ⁿՏես Ղև. ժթ. 34 · ᵒԳլ. ժե. 3 · ʰԳլ. ժե. 10 · ᵖԹուոց Լ. 2 · Ժող. ե. 4, 5 · ᵠԹուոց Լ. 2 · Սաղ. կզ. 13, 14 · ʳՄատ. ժբ. 1 · Մար. բ. 23 · Ղու. զ. 1 · ᵃՄատ. ե. 31 · ժթ. 7 · Մար. ժ. 4 · ᵇԵրեմ. ա. 1

Ն. Ք. Գ.
1451

ա Գւ. Ի. 7։
բ Առակ. Ե. 18։
գ Եւ. Իա. 16։
դ Գւ. ԺԹ. 19։
ե Ղև. ԺԴ. 2։ ԺԴ. 2։
զ Տես. Ղու. ԺԷ. 32։ ա Կոր. Ժ. 6։
1490
Ր Թու. ԺԲ. 10։
է Եւ. ԻԲ. 26։ Յոբ. ԻԹ. 11, 13։ լա. 20։ բ Կոր. Թ. 13։ բ Տիմ. ա. 18։
ը Գւ. Զ. 25։ Սաղ. ՃԶ. 31։ ՃԺԲ. 9։ Դան. Դ. 27։
թ Մաղ. Գ. 5։
ժ Ղև. ԺԹ. 13։ Երեմ. ԻԲ. 13։ Յակ. Ե. 4։
ի Յակ. Ե. 4։
լ Դ Թագ. ԺԴ. 6։ բ Մն. ԻԵ. 4։ Երեմ. լա. 29, 30։ Եզեկ. ԺԸ. 20։
խ Եւ. ԻԲ. 21, 22։ Առակ. ԻԲ. 22։ Ես. ա. 23։ Երեմ. Ե. 28։ ԻԲ. 3։ Եզեկ. ԻԲ. 29։ Զաք. Է. 10։ Մաղ. Գ. 5։
ծ Եւ. ԻԲ. 26։
կ Հմր 22։ Գւ. ԺԶ. 12։
հ Ղև. ԺԹ. 9, 10։ ԻԳ. 22։

5 ա Նոր ամուսնացած մարդը պատերազմի չերթայ, ու անոր բնաւ պաշտօն մը չտրուի. տարի մը իր տանը մէջ ազատ թող նստի, ու բ իր առած կինկը ուրախացընէ։
6 Չըլլայ որ մարդ մը աղօրիքը կամ անոր վերի քարը գրաւ առնէ. քանզի իր ընկերին կեանքը գրաւ առած կ'ըլլայ։
7 գ Եթէ որ մարդ մը գտնուի, որ իր եղբայրներուն, Իսրայէլի որդւոցը մէկը գողնալով՝ զանիկայ ծառայեցուցեր է կամ ծախեր է, ան գողը թող մեռնի. Նու ձեր մէջէն չարութիւնը վերցընես։
8 ե Բորոտութեան ախտին համար զգուշութիւն ըրէք, Ղևտացի քահանաներուն բոլոր ձեզի սորվեցուցած բաները ճշդիւ պահելու ու ընելու. ինչ որ անոնց պատուիրեր եմ, զգուշութեամբ 'ի գործ դնէք։
9 զ Միտքդ բեր ինչ որ քու Տէր Աստուածդ Ր Մարիամին ըրաւ ճամբուն մէջ, Եգիպտոսէն ելած ատեննիդ։
10 Երբոր քու դրացիիդ մէկ բան մը փոխ տաս, դրաւ առնելու համար
11 անոր տունը չմտնես. Դուրսը կայնիս, ու փոխ առնող մարդը՝ գրա-
12 ւը քեզի դուրս բերէ։ Եւ թէ որ ան մարդը աղքատ է, անոր գրա-
13 ւովը չպառկիս. է Արևը մտածին պէս՝ անպատճառ անոր գրաւը ետ տաս, որ անիկայ իր հանդերձովը պառկի, ու քեզ օրհնէ. և Նքու Տէր Աստուծոյդ առջևը ը քեզի արդարութիւն սեպուի։
14 թ Աղքատ ու կարօտ վարձկանին զրկանք չընես, թէ՛ քու եղբայրներէդ, և թէ քու երկրիդ մէջ՝ քու քաղաքներդ գտնուող օտարական-
15 ներէն ըլլայ։ Նոյն օրը ժ արևը չմտած՝ անոր վարձքը հատուցանես. քանզի անիկայ աղքատ է, ու անոր խեղճը միտքը անոր վրայ է. ի չըլլայ որ քեզի համար Տէրոջը բողոքէ, ու մեղքի տէր ըլլաս։
16 լ Տղոց յանցանքին համար՝ հայրերը չմեռցուին, ու հայրերուն յանցանքին համար տղաքը չմեռցուին. ամէն մարդ իր յանցանքին համար պիտի մեռցուի։
17 խ Օտարականին ու որբին իրաւունքը չծռես. Նու որբևարիին
18 հանդերձը գրաւ չառնես։ Եւ ծ մի'տքդ բեր, որ դուն Եգիպտոսի մէջ ծառայ էիր, ու քու Տէր Աստուածդ քեզ անկէ ազատեց. անոր համար ես քեզի կը պատուիրեմ որ ալս բանը ընես։
19 կ Երբոր քու արտիդ մէջ հունձքդ հնձես, ու արտին մէջը մէկ որայ մը մոռցած ըլլաս, զանիկայ առնելու

համար ետ չդառնաս. անիկայ օտարականին, որբին ու որբևարիին թող ըլլայ. որպէս զի քու Տէր Աստուածդ Նքու ձեռքերուդ ամէն
20 գործքին մէջ քեզ օրհնէ։ Ձիթենիդ թօթվելէդ ետքը՝ ճիւղերը ոստէ ոստ չփնտռես. անիկայ օտարականին, որբին ու որբևարիին
21 թող ըլլայ։ Եւ այգիիդ խաղողները ժողվելէդ ետքը՝ ճռաքաղ չընես. անիկայ օտարականին՝ որբին
22 ու որբևարիին թող ըլլայ։ Եւ Նմի'տքդ բեր՝ որ Եգիպտոսի երկրին մէջ ծառայ էիր. անոր համար ես քեզի կը պատուիրեմ որ աս բանը ընես։

## ԳԼ. ԻԵ

1 Ծեծին թիւը քառասունէն աւելի պիտի չըլլար։ 4 Կալի մէջ բանող եզին դունչը կապուելու չէր։ 5 Եղբօրը զաւակ տալու համար պատուէր։ 11 Անպարկեշտ կնկան պատիժը։ 13 Պակաս կշիռքներու վրայով։ 17 Ամաղէկին յիշատակը բոլորովին պիտի ջնջուէր։

1 Երբոր ա մարդոց մէջ վէճ մը ըլլայ, և դատաստանի երթան, բ դատաւորները անոնց դատը մտիկ ընելով՝ Բ իրաւունք ունեցողը արդարացընեն, ու յանցաւորը դա-
2 տապարտեն։ Եւ յանցաւոր եղողը՝ թէ որ գ ծեծի արժանի է, դատաւորը զանիկայ պառկեցընէ, ու անոր յանցանքին համեմատ դ իր առջևը ծեծել տայ զանիկայ՝ թու-
3 ով. ե Քառասունէն աւելի զարնել չտայ. չըլլայ որ ասկէ աւելի զարնելովը, եղբայրդ Նքու աչքիդ առջևը անարգուի։
4 Ե Կալի մէջ աշխատող եզին դունչը չկապես։
5 Է Երբոր եղբարք մէկտեղ բնակին, ու անոնց մէկը առանց զաւկի մեռնի, մեռնողին կինկը դուրսը օտար մարդու հետ չկարգուի. Ր տագրը անոր մօտենայ, և զանիկայ իրեն կնիկ առնէ, ու տագրութեան պարտաւորութիւնը անոր հատու-
6 ցանէ. Եւ անոր ծնած առջինեկ տղան՝ ժ մեռնողին եղբօրը անունովը * կանչուի, որ ի չըլլայ թէ անոր ա-
7 նունը Իսրայէլէն ջնջուի։ Եւ թէ որ ան մարդը Նիր հարսը առնել չուզէ, ան ատենը հարսը դուռը ելլէ ծերերուն՝ ու ըսէ. Իմ տագրս Իսրայէլի մէջ իր եղբօրը անունը հաստատելէն կը հրաժարի. տագրութեան պարտաւորութիւնը ին-
8 ծի հատուցանել չուզեր։ Ան ատենը անոր քաղաքին ծերերը զանիկայ պիտի կանչեն, ու անոր խօսին. և թէ որ անիկայ հաստատ կենալով՝ ըսէ թէ, Ի Ասիկայ չեմ
9 ուզեր առնել, Ան ատենը հարսը անոր պիտի մօտենայ ծերերուն առ-

Ն. Ք. Գ.
1451

ժ Գւ. ԺԵ. 10։ Սաղ. Խա. 1։ Առակ. ԺԹ. 17։
Ն Հմր 18։
ա Գւ. ԺԹ. 17։ Եզեկ. ԽԴ. 24։
Բ Տես Առակ. ԺԷ. 15։
գ Ղու. ԺԲ. 48։
դ Մատ. Ժ. 17։
ե բ Կոր. ԺԱ. 24։
Ե Յոբ. ԺԸ. 3։
Է Առակ. ԺԲ. 10։ ա Կոր. Թ. 9։ ա Տիմ. Ե. 18։
Ր Մատ. ԻԲ. 24։ Մար. ԺԲ. 19։ Ղու. Ի. 28։
Ը Ծն. ԼԸ. 8։ Հռութ. Ա. 12, 13։ Դ. 9։
ժ Ծն. ԼԸ. 9։
* Եբր. կենայ,
ի Հռութ. Դ. 10։
Ն Հռութ. Դ. 1, 2։
Ի Հռութ. Դ. 6։

Ն. Ք. ՉՖ.
1451

ջեր՝ [ծ]և անոր ոտքէն կօշիկը հանէ ,
ու անոր երեսը թքնէ , և խօսելով
պիտի ըսէ . Իր եղբօրը տունը շի-
նել չուզող մարդուն ասանկ կ՚ըլ-
10 լայ ։ Եւ անոր անունը Իսրայէլի
մէջ [կ]Կօշիկը հանուած մարդուն
տունը ըսուի ։
11 Երբոր երկու մարդիկ իրարու հետ
կը ծեծկուին , և մէկուն կնիկը՝
զարնողին ձեռքէն իր էրիկը ազա-
տելու համար՝ մօտենայ , ու ձեռ-
քը երկընցընելով անոր ամօթոյքը
12 բռնէ , Ան ատենը անոր ձեռքը
կտրես . և [հ]քու աչքդ բնաւ անոր
չխնայէ ։
13 [ձ]Մախաղիդ մէջ տեսակ տեսակ
մեծ ու պզտիկ կշիռքի քարեր չըլլա՛ն ։
14 Տանդ մէջ տեսակ տեսակ մեծ ու
15 պզտիկ արդուներ չըլլա՛ն ։ Քու
կշիռքիդ քարը լման ու արդար ըլ-
լայ . քու արդուդ լման ու արդար
ըլլայ , [ղ]որ քու օրերդ երկար ըլլան
ան երկրին վրայ , որն որ քու Տէր
16 Աստուածդ քեզի կու տայ ։ Քան-
զի [ճ]ամէն աս բաները ընողը , ամէն
անիրաւութիւն ընողը՝ քու Տէր
Աստուծոյդ առջեւ պիղծ է ։
17 [մ]Եգիպտոսէն ելած ատենդ՝ ճամ-
բան Ամաղէկին քեզի ըրածը մի՛տքդ
18 պահէ . Ճամբուն մէջ ինչպէս քեզ
դիմաւորեց , և քու ետեւէդ եկող բո-
լոր տկարները կոտրեց , երբոր դուն
աշխատած ու յոգնած էիր . ու [յ]Աս-
19 տուծմէ չվախցաւ ։ Ուստի [ն]երբ-
որ քու Տէր Աստուածդ՝ քու բոլոր
շրջակայ թշնամիներէդ քեզ հան-
գըստացընէ ան երկրին մէջ , որն
որ քու Տէր Աստուածդ քեզի ժա-
ռանգութիւն կու տայ որ անոր
տիրես , ան ատենը [շ]Ամաղէկին յի-
շատակը երկինքին տակէն բոլորո-
վին վերցընես . չըլլայ որ մոռնաս ։

ծ Հռութ. դ. 7. կ Հռութ. դ. 11. հ Գլ. ժթ. 13. ձ Ղև. ժթ. 35, 36. Առակ. ժա. 1. Եզեկ. խե. 10. Միք. զ. 11. ղ Ել. ի. 12. ճ Առակ. ժա. 1. Ա Թես. դ. 6. մ Ել. ժէ. 8. յ Սաղ. լզ. 1. Առակ. ժզ. 6. Հռով. գ. 18. ն Ա Թագ. ժե. 3. շ Ել. ժէ. 14.

## ԳԼ. ԻԶ

1 Երախայրիներուն կողովը մատուցանողին խոստովանութիւնը ։ 12 Երրորդ տարւոյն տասանորդները բերողին ընելու աղօթքը ։ 16 Աստուծոյ և ժողովուրդին մէջտեղը եղած ուխտը ։

1 Երբոր մտնես ան երկիրը , որն որ
քու Տէր Աստուածդ քեզի ժա-
ռանգութիւն կու տայ . և զանի-
կայ ժառանգես , ու հոն բնակիս ,
2 [ա]Ան ատենը երկրին ամէն պտուղ-
ներուն երախայրիներէն պիտի առ-
նես , որոնք քու Տէր Աստուծոյդ
քեզի տուած երկրէն ժողվեր ես ,
ու մէկ կողովի մը մէջ դնելով [բ]եր-
թաս ան տեղը՝ որ քու Տէր Աս-
տուածդ պիտի ընտրէ իր անունը
3 հոն դնելու համար . Եւ ան օրերը
եղող քահանային երթաս ըսես .
Ես այսօր քու Տէր Աստուծոյդ
առջեւ կը խոստովանիմ՝ որ ես մտայ
ան երկիրը , որուն համար Տէրը մեր
հայրերուն երդում ըրեր էր մեզի
4 տալու ։ Ետքը քահանան կողովը
քու ձեռքէդ առնելով՝ զանիկայ
քու Տէր Աստուծոյդ սեղանին առ-
5 ջեւը պիտի դնէ . Եւ դուն պատաս-
խան տալով՝ քու Տէր Աստուծոյդ
առջեւը ըսես . Իմ հայրս թափա-
ռական [գ]Ասորի մը ըլլալով , [դ]Ե-
գիպտոս իջաւ , ու հոն [ե]քիչուոր
հոգիով պանդխտութիւն ընելով՝
մէկ մեծ՝ զօրաւոր ու շատուոր ազգ
6 մը եղաւ . Ու [զ]Եգիպտացիք մեզ
չարչարեցին , մեզ նեղեցին , և մեր
վրայ ծանր ծառայութիւններ դը-
7 րին . Ու [է]մենք մեր հայրերուն Տէր
Աստուծոյն աղաղակեցինք . և Տէ-
րը մեր ձայնը լսելով՝ մեր նեղու-
թիւնը՝ աշխատութիւնը ու մեզի
8 եղած զրկանքը տեսաւ . [ը]Եւ Տէրը
զօրաւոր ձեռքով ու բարձր բա-
զուկով՝ [թ]մեծ ահարկութիւննե-
րով՝ նշաններով ու հրաշքներով
9 մեզ Եգիպտոսէն հանեց . Եւ մեզ
աս տեղս բերաւ , ու մեզի աս եր-
կիրը՝ [ժ]կաթ ու մեղր բղխող երկի-
10 րը տուաւ ։ Եւ արդ՝ ով Տէր , ին-
ծի տուած երկրիդ պտուղներուն
երախայրիները բերի ։ Ու ա-
նոնք քու Տէր Աստուծոյդ առջեւը
դնելով՝ Տէր Աստուծոյդ առջեւը
11 երկրպագութիւն ընես . Եւ [ի]քու
Տէր Աստուծոյդ քեզի ու քու
տանդ տուած բոլոր բարիքներովը
ուրախութիւն ընես , դուն՝ ալ՝
Ղեւտացին ալ՝ և ձեր մէջը եղող
օտարականն ալ ։
12 Երրորդ տարին՝ [լ]տասանորդի
տարի ըլլալով , երբոր դուն [խ]քու
արդիւնքներուդ բոլոր տասանորդ-
ները զատես լմնցընես , անոնք
Ղեւտացիին՝ օտարականին՝ որբին
ու որբեւարիին տաս , որ անոնք ալ
քու քաղաքներուդ մէջը ուտեն
13 կշտանան ։ Ան ատենը քու Տէր
Աստուծոյդ առջեւը ըսես . Սուրբ
եղած բանը բոլորովին տունէս հա-
նեցի , և քու բոլոր հրամայած պա-
տուիրանքներուդ համեմատ՝ զա-
նիկայ Ղեւտացիին՝ օտարականին՝
որբին ու որբեւարիին տուի . քու
պատուիրանքներդ զանց չըրի , [ծ]ու
14 զանոնք չմոռցայ . [կ]Սուգիս օրերուն
մէջ՝ անկէ չկերայ , ու անմաքուր
բանի մը չգործածեցի , և անկէ
մեռելի համար չտուի . իմ Տէր Աս-
տուծոյս խօսքը մտիկ ըրի . ինծի
ինչ որ պատուիրեցիր , անոր հա-
15 մեմատ ըրի . [հ]Նայէ՛ երկինքէն քու
սուրբ բնակարանէդ , և օրհնէ՛ քու
Իսրայէլ ժողովուրդդ , ու ան երկի-
րը՝ որ տուիր մեզի , ինչպէս որ մեր
հայրերուն երդում ըրած էիր թո-

ա Ել. իգ. 19. լդ. 26. Թուոց. ժը. 13. Գլ. ժզ. 10. Առակ. գ. 9. բ Գլ. ժբ. 5.

Ն. Ք. ՉՖ.
1451

գ Ովս. ժբ. 12. դ Ծն. խզ. 1, 6. Գործ. է. 15. ե Ծն. խզ. 27. Գլ. ժ. 22. զ Ել. ա. 11, 14. է Ել. բ. 23, 24, 25. գ. 9. դ. 31. ը Ել. ժբ. 37, 51. ժգ. 3, 14, 16. Գլ. ե. 15. թ Գլ. դ. 34. ժ Ել. գ. 8. ի Գլ. ժբ. 7, 12, 18. ժզ. 11. լ Գլ. ժդ. 28, 29. խ Ղև. իէ. 30. Թուոց. ժը. 24. ծ Սաղ. ճժթ. 141, 153, 176. կ Ղև. է. 20. իա. 1, 11. Ովս. թ. 4. հ Ես. կգ. 15. Զաք. բ. 13.

Ն. Ք. Գ. Ք. 1451

յ Ել. ի. 19 ;
ղ Ել. զ. 7 ; ժթ. 5 ; Գլ. է. 6 ; ժդ. 2 ; իը. 9 ;
ճ Գլ. դ. 7 ; Տ ; իը. 1 ; Սաղ. ճխը. 14 ;
մ Ել. ժթ. 6 ; Գլ. է. 6 ; իը. 9 ; ա Պետ. բ. 9 ;
ա Յես. դ. 1 ;
բ Յես. ը. 32 ;
գ Գլ. ժա. 29 ; Յես. ը. 30 ;
դ Ել. ի. 25 ; Յես. ը. 31 ;

ըս , երկիր մը՝ որ կաթ ու մեղր կը
բղխէ ։
16 Այսօր քու Տէր Աստուածդ քեզի
կը պատուիրէ , որ աս կանոնները
ու դատաստանները 'ի գործ դնես .
ուստի բոլոր սրտովդ ու բոլոր հո-
գիովդ պահես ու կատարես զանոնք ։
17 [յ] Դուն յայսօր Տէրոջը խօսք կու
տաս , որ անիկայ քեզի Աստուած
ըլլայ , ու դուն անոր ճամբաներուն
մէջը քալես , և անոր կանոնները՝
պատուիրանքները ու դատաստան-
ները պահես , ու խօսքը մտիկ ընես .
18 [ղ] Տէրն ալ այսօր քեզի խօսք կու
տայ , որ դուն իրեն սեպհական ժո-
ղովուրդ ըլլաս , ինչպէս որ քեզի
ըսաւ , որ անոր բոլոր պատուի-
19 րանքները պահես . Եւ [ճ] բոլոր իր
ստեղծած ազգերէն դերազանց ընէ
քեզ , գովութիւնով՝ համբաւով
ու փառքով , որ [մ] սուրբ ժողո-
վուրդ մը ըլլաս քու Տէր Աստու-
ծոյդ՝ իր ըսածին պէս ։

## ԳԼ. ԻԷ

1 Մովսէս կը հրամայէ որ բոլոր պատուիրանքները քարերու վրայ գրեն , 5 և չտաշուած քարէ սեղան մը շինեն ։ 11 Մովսէս կ'որոշէ Գարիզին ու Գեբաղ լեռներուն վրայ կայնելու ցեղերը ։ 14 Գեբաղ լեռան վրայ խօսուելու անէծքները ։

1 Եւ Մովսէս Իսրայէլի ծերերուն
հետ՝ ժողովուրդին պատուիրե-
լով՝ ըսաւ . Պահեցէ՛ք ան բոլոր
պատուիրանքները՝ որոնք ես այսօր
2 ձեզի կը պատուիրեմ ։ Ու [ա] Յոր-
դանանէն՝ քու Տէր Աստուծոյդ
քեզի տուած երկիրը անցած օրդ՝
[բ] քեզի մեծ քարեր կանգնես , ու
3 զանոնք կիրով ծեփես . Եւ աս օ-
րէնքին բոլոր խօսքերը անոնց վրայ
գրես , երբոր անցնիս ու մտնես ան
երկիրը որն որ քու Տէր Աստուա-
ծըդ քեզի կու տայ , երկիր մը՝ որ
կաթ ու մեղր կը բղխէ , ինչպէս
որ քու հայրերուդ Տէր Աստուա-
4 ծը քեզի ըսաւ ։ Ուստի երբոր
Յորդանանէն անցնիս , աս օրուան
քեզի պատուիրածիս պէս՝ աս քա-
րերը [գ] Գեբաղ լեռան վրայ կանգ-
նես , ու զանոնք կիրով ծեփես ։
5 Եւ հոն քու Տէր Աստուծոյդ մէկ
սեղան մը շինես , քարերէ [illegible]
սեղան մը . [դ] անոնց վրայ երկաթ
6 չդպցընես . [illegible] քու Տէր Աս-
տուծոյդ սեղանը ամբողջ քարերէ
շինես . ու անոր վրայ քու Տէր
Աստուծոյդ ողջակէզներ մատու-
7 ցանես . Եւ խաղաղութեան զոհեր
մատուցանելով՝ հոն ուտես , ու
քու Տէր Աստուծոյդ առջևը ու-
8 րախանաս . Եւ աս օրէնքին բոլոր
խօսքերը քարերուն վրայ խիստ
պարզ կերպով մը գրես ։

9 Եւ Մովսէս Ղևտացի քահանա-
ներուն հետ բոլոր Իսրայէլին խօ-
սելով՝ ըսաւ . Ով Իսրայէլ , լուռ
կեցիր՝ ու մտիկ ըրէ . [է] դուն այսօր
քու Տէր Աստուծոյդ ժողովուրդը
10 եղար . Ուստի քու Տէր Աստու-
ծոյդ խօսքը մտիկ ընելով՝ 'ի գործ
դնես անոր պատուիրանքները ու
կանոնները , որոնք ես այսօր քեզի
կը պատուիրեմ ։
11 Եւ նոյն օրը Մովսէս ժողովուր-
12 դին պատուիրելով՝ ըսաւ . Երբոր
Յորդանանէն անցնիք , [ը] ժողովուր-
դը օրհնելու համար Գարիզին լեռան
վրայ ասոնք թող կայնին . Շը-
մաւոն՝ Ղևի՝ Յուդա՝ Իսաքար՝
13 Յովսէփ ու Բենիամին . Եւ [թ] անէծ-
քի համար Գեբաղ լեռան վրայ
ասոնք թող կայնին . Ռուբէն՝
Գադ՝ Ասեր՝ Զաբուղոն՝ Դան ու
Նեփթաղիմ ։
14 Ու [ժ] Ղևտացիք Իսրայէլի բոլոր
մարդոցը հետ խօսելով՝ բարձր ձայ-
նով պիտի ըսեն .
15 [ի] Անիծեալ ըլլայ ան մարդը՝ որ
արուեստաւորի ձեռագործ՝ ու Տէ-
րոջը առջևը պիղծ [illegible] փո-
րուած կամ ձուլածոյ կուռք կը
շինէ , ու գաղտուկ տեղ մը կը դը-
նէ . [լ] և բոլոր ժողովուրդը պա-
տասխան տալով՝ Ամէ՛ն պիտի ըսէ ։
16 [խ] Անիծեա՛լ ըլլայ ան՝ որ իր հօ-
րը կամ մօրը դէմ հայհոյութիւն
կ'ընէ . և բոլոր ժողովուրդը Ամէ՛ն
պիտի ըսէ ։
17 [ծ] Անիծեալ ըլլայ ան՝ որ իր դը-
րացիին սահմանը կը փոխէ . և բո-
լոր ժողովուրդը Ամէ՛ն պիտի ըսէ ։
18 [կ] Անիծեա՛լ ըլլայ ան՝ որ կոյրը իր
ճամբայէն կը խոտորեցընէ . և բոլոր
ժողովուրդը Ամէ՛ն պիտի ըսէ ։
19 [հ] Անիծեա՛լ ըլլայ ան , որ պան-
դուխտին՝ որբին ու որբևայրիին
իրաւունքը կը ծռէ . և բոլոր ժո-
ղովուրդը Ամէ՛ն պիտի ըսէ ։
20 [ձ] Անիծեա՛լ ըլլայ ան՝ որ իր հօրը
կնկանը հետ կը պառկի . քանզի
իր հօրը քղանցքը կը բանայ . և
բոլոր ժողովուրդը Ամէ՛ն պիտի ը-
սէ ։
21 [ղ] Անիծեա՛լ ըլլայ ան՝ որ ո՛ և իցէ
անասունի հետ կը պառկի . և բո-
լոր ժողովուրդը Ամէ՛ն պիտի ըսէ ։
22 [ճ] Անիծեա՛լ ըլլայ ան՝ որ իր հօրը
աղջիկը կամ իր մօրը աղջիկը եղող
իր քրոջը հետ կը պառկի . և բոլոր
ժողովուրդը Ամէ՛ն պիտի ըսէ ։
23 [մ] Անիծեա՛լ ըլլայ ան՝ որ իր զո-
քանչին հետ կը պառկի . և բոլոր
ժողովուրդը Ամէ՛ն պիտի ըսէ ։
24 [յ] Անիծեա՛լ ըլլայ ան՝ որ իր դրա-
ցին գաղտուկ կը մեռցընէ . և բոլոր
ժողովուրդը Ամէ՛ն պիտի ըսէ ։

Ն. Ք. Գ. Ք. 1451

է Գլ. իզ. 18 ;
ը Գլ. ժա. 29 ; Յես. ը. 33 ; Դատ. թ. 7 ;
թ Գլ. ժա. 29 ; Յես. ը. 33 ;
ժ Գլ. լգ. 10 ; Յես. ը. 33 ; Դան. թ. 11 ;
ի Ել. ի. 4, 23 ; լդ. 17 ; Ղև. ժթ. 4 ; իզ. 1 ; Գլ. դ. 16, 23 ; ե. 8 ; Ես. խդ. 9 ; Ովս. ժգ. 2 ;
լ Յես Թու. ե. 22 ; Երեմ. ժա. 5 ; ա Կոր. ժդ. 16 ;
խ Ել. ի. 12 ; իա. 17 ; Ղև. ժթ. 3 ; Գլ. իա. 18 ;
ծ Գլ. ժթ. 14 ; Առակ. իբ. 28 ;
կ Ղև. ժթ. 14 ;
հ Ել. իբ. 21, 22 ; Գլ. ժ. 18 ; իդ. 17 ; Մաղ. գ. 5 ;
ձ Ղև. ժը. 8 ; ի. 11 ; Գլ. իբ. 30 ;
ղ Ղև. ժը. 23 ; ի. 15 ;
ճ Ղև. ժը. 9 ; ի. 17 ;
մ Ղև. ժը. 17 ; ի. 14 ;
յ Ել. ի. 13 ; իա. 12, 14 ; Ղև. իդ. 17 ; Թու. լե. 31 ; Գլ. ժթ. 11 ;

Ն. Ք. ԳՔ. 1451

Ել. իդ. 7. 8։ Գլ. Ժ. 17։ Ժզ. 19։ Եզկ. իբ. 12։ Գլ. իը. 15։ Սաղ. ճԺթ. 21։ Երեմ. Ժա. 3։ Գաղ. գ. 10։

25 Անիծեալ ըլլայ ան՝ որ անմեղ
մարդը մեռցնելու համար կաշառք
կ'առնէ. և բոլոր ժողովուրդը Ա-
մէ՛ն պիտի ըսէ։
26 Անիծեալ ըլլայ ան՝ որ աս օրէն-
քիս խօսքերուն մէջը չկենար՝ որ
զանոնք կատարէ. և բոլոր ժողո-
վուրդը Ամէ՛ն պիտի ըսէ։

## ԳԼ. ԻԸ

1 Հնազանդութեան օրհնութիւնները։ 15 Անհնազանդութեան անէծքները։

Ել. Ժե. 26։ Ղև. իզ. 3։ Եա. ծե. 2։ Գլ. իզ. 19։ Հմր 15։ Զաք. ա. 6։ Սաղ. ճիը. 1, 4։ Ծն. լթ. 5։ Հմր 11։ Ծն. իբ. 17։ խթ. 25։ Գլ. է. 13։ Սաղ. ճէ. 38։ ճիէ. 3։ ճիը. 3։ Առակ. Ժ. 22։ Տիմ. գ. 8։ Սաղ. ճիա. 3։ Ղև. իզ. 7, 8։ Թագ. իբ. 38, 39, 41։ Սաղ. ձթ. 23։ Տես Հմր 25։ Ղև. իե. 21։ Առակ. գ. 10։ Գլ. Ժե. 10։ Ել. Ժթ. 5, 6։ Գլ. է. 6։ իդ. 18, 19։ իթ. 13։ Թու. զ. 27։ Մն. է. 14։ Եա. կդ. 19։ Դան. թ. 18, 19։ Գլ. Ժա. 25։ Հմր 4։ Գլ. լ. 9։ Առակ. Ժ. 22։ Ղև. իզ. 4։ Գլ. Ժա. 14։ Գլ. Ժդ. 29։ Գլ. Ժե. 6։

1 Ու թէ որ քու Տէր Աստուծոյդ
խօսքը ուշադրութեամբ մտիկ
ընելով՝ զգուշութեամբ 'ի գործ դը-
նես անոր բոլոր պատուիրանքները՝
որոնք ես այսօր քեզի կը պատուի-
րեմ, քու Տէր Աստուածդ երկրիս
բոլոր ազգերէն գերազանց պիտի
2 ընէ քեզ։ Եւ թէ որ քու Տէր Աս-
տուծոյդ խօսքին հնազանդիս, աս
բոլոր օրհնութիւնները քու վը-
րադ գալով՝ քեզի պիտի հասնին։
3 Քաղաքի մէջ օրհնեալ, ու դաշ-
4 տի մէջ օրհնեալ պիտի ըլլաս. Քու
որովայնիդ պտուղը՝ քու երկրիդ
պտուղը՝ քու անասուններուդ պը-
տուղը՝ կովերուդ ծնունդը ու ոչ-
խարներուդ հօտերը օրհնեալ պիտի
5 ըլլան. Քու կողովդ ու տաշտդ
6 օրհնեալ պիտի ըլլան. Մտած ա-
տենդ օրհնեալ, ու ելած ատենդ
7 օրհնեալ պիտի ըլլաս. Տէրը քու
առջևէդ զարդել պիտի տայ քու
վրադ ելլող թշնամիներդ. անոնք
քեզի դէմ մէկ ճամբով պիտի ել-
լեն, և քու առջևէդ եօթը ճամ-
8 բով պիտի փախչին։ Տէրը քու
շտեմարաններուդ ու ամէն ձեռք
զարնելու բաներուդ օրհնութիւն
պիտի խրկէ. և քու Տէր Աստու-
ծոյդ քեզի տուած երկրին մէջ քեզ
9 պիտի օրհնէ։ Թէ որ քու Տէր Աս-
տուծոյդ հրամանները պահելով՝ ա-
նոր ճամբաներուն մէջը քալես,
Տէրը քեզի երդում ըրածին պէս՝
քեզ իրեն սուրբ ժողովուրդ պիտի
10 հաստատէ. Ու երկրիս ամէն ժո-
ղովուրդները պիտի տեսնեն որ Տէ-
րոջը անունը քու վրադ կը կոչուի,
11 ու քեզմէ պիտի վախնան։ Եւ
Տէրը բարիքներով քեզ պիտի լե-
ցընէ, քու որովայնիդ պտուղը՝
քու անասուններուդ պտուղը ու
քու երկրիդ պտուղը շատցնելով ան
երկրին վրայ, որն որ Տէրը քու
հայրերուդ երդում ըրաւ քեզի տա-
12 լու։ Տէրը իր բարութեան գան-
ձը՝ այսինքն երկինքը քեզի պիտի
բանայ, որ քու երկրիդ անձրևը
ատենովը տայ, ու քու ձեռքիդ
ամէն գործը օրհնէ. և դուն շատ
ազգերու փոխ պիտի տաս, բայց

13 դուն փոխ պիտի չառնես։ Տէրը
ժողովուրդներու գլուխ պիտի ընէ
քեզ, և ոչ թէ պոչ. դուն միշտ
վրայ պիտի ըլլաս, ու բնաւ վար
պիտի չիյնաս, թէ որ քու Տէր
Աստուծոյդ պատուիրանքները մը-
տիկ ընելով՝ պահես ու կատարես,
որոնք ես այսօր քեզի կը պատուի-
14 րեմ, Եւ օտար աստուածներուն
ետևէն երթալու համար, ու անոնց
ծառայութիւն ընելու համար, աջ
կողմը կամ ձախ կողմը չխոտորիս
ան բոլոր խօսքերէն, որոնք ես այ-
սօր քեզի կը պատուիրեմ։
15 Բայց թէ որ քու Տէր Աստու-
ծոյդ խօսքին չհնազանդիս, և չպա-
հես ու չընես անոր բոլոր պատուի-
րանքները ու կանոնները՝ որոնք ես
այսօր քեզի կը պատուիրեմ, ան
ատենը աս ամէն անէծքները քու
վրադ գալով՝ քեզի պիտի հասնին։
16 Քաղաքի մէջ անիծեալ, ու դաշտի
17 մէջ անիծեալ պիտի ըլլաս. Քու
կողովդ ու տաշտդ անիծեալ պիտի
18 ըլլայ. Քու որովայնիդ պտուղը՝
երկրիդ պտուղը՝ կովերուդ ծնունդը
ու ոչխարներուդ հօտերը անիծեալ
19 պիտի ըլլան. Քու մտած ատենդ
անիծեալ՝ ու քու ելած ատենդ
20 անիծեալ պիտի ըլլաս։ Եւ Տէրը
քու ամէն ձեռք զարկած գործքիդ
մէջը անէծք՝ տառապանք ու
դյանդիմանութիւն պիտի խրկէ
քեզի՝ քու չար գործքերուդ՝ ու
զիս ձգելուդ համար, մինչև որ
շուտով բնաջինջ ըլլաս ու կոր-
21 սուիս։ Տէրը քեզի ժանտախտը
պիտի փակցընէ, մինչև որ քեզ
հատցընէ ան երկրին վրայէն, ուր
որ դուն կը մտնես անիկայ ժառան-
22 գելու։ Եւ Տէրը քեզ պիտի
զարնէ ծիւրական ախտով՝ հրա-
տագնապ տենդով՝ ջերմով՝ ու այ-
րող տաքութիւնով՝ սրով՝ խոր-
շակահարութեամբ ու դեղնախտ
դալուկով. և ասոնք պիտի հալա-
23 ծեն քեզ, մինչև որ կորսուիս։ Եւ
գլխուդ վրայի երկինքը պղնձէ, ու
տակդ եղած երկիրը երկաթէ պիտի
24 ըլլայ։ Տէրը անձրևի տեղ՝ հող ու
փոշի պիտի տայ քու երկրիդ. ու
երկինքէն քու վրադ պիտի իջնեն,
մինչև որ դուն բնաջինջ ըլլաս։
25 Տէրը քու թշնամիներուդ առջևը
քեզ զարդել պիտի տայ. անոնց
դէմ մէկ ճամբով պիտի ելլես, և
անոնց առջևէն եօթը ճամբով պի-
տի փախչիս. ու երկրիս բոլոր
թագաւորութեանց մէջը թափա-
26 ռական պիտի ըլլաս. Եւ քու
մարմինդ՝ երկինքին բոլոր թռչուն-
ներուն ու երկրիս գազաններուն
կերակուր պիտի ըլլայ. և զանոնք

Ն. Ք. ԳՔ. 1451

Ես. թ. 14, 15։ Գլ. ե. 32։ Ժա. 16։ Ղև. իզ. 14։ Ողբ. բ. 17։ Դան. թ. 11, 13։ Մաղ. բ. 2։ Հմր 2։ Տես Հմր 3, 5։ Մաղ. բ. 2։ Զաք. Ժդ. 13։ Սաղ. ձ. 16։ Ես. լ. 17։ ծա. 20։ կզ. 15։ Ղև. իզ. 25։ Երեմ. իդ. 10։ Ղև. իզ. 16։ Կամ՝ հրաշտութեամբ։ Ամով. դ. 9։ Ղև. իզ. 19։ Հմր 7։ Ղև. իզ. 17, 37։ Գլ. լբ. 30։ Ես. զ. 17։ Երեմ. Ժե. 4։ իդ. 9։ Եզեկ. իգ. 46։ Թագ. Ժէ. 44, 46։ Սաղ. հթ. 2։ Երեմ. է. 33։ Ժզ. 4։ լդ. 20։

Ն․ Ք․ զԲ․
1451

ⁱ Հմր 35 ։ Եւ․ Թ․ 9 ։ Ժե․ 26 ։
ʲ Ա Թագ․ Ե․ 6 ։ Սաղ․ Հր․ 66 ։
⁺ Երեմ․ Դ․ 9 ։
• Յոբ Ե․ 14 ։ Ես․ Ծթ․ 10 ։
$ Յոբ․ Լա․ 10 ։ Երեմ․ Ը․ 10 ։
= Յոբ․ Լա․ 8 ։ Երեմ․ Ժբ․ 13 ։ Ամով․ Ե․ 11 ։ Միք․ Զ․ 15 ։ Սոփ․ Ա․ 13 ։
Բ Դւ․ Ի․ 6 ։
ᶜ Սաղ․ Ճժթ․ 82 ։
Տ Հմր 51 ։ Ղե․ Իզ․ 16 ։ Երեմ․ Ե․ 17 ։
Ե Հմր 67 ։
Ղ Հմր 27 ։
Ե Դ Թագ․ Ժէ․ 4․ 6 ։ Ժդ․ 12․ 14 ։ Իե 7․ 11 ։ Բ Մն․ Լդ․ 11 ։ Լզ․ 6 ։ 20 ։
Է Դւ․ Դ․ 28 ։ Հմր 64 ։ Երեմ․ Ժզ․ 13 ։
Ր Գ Թագ․ Թ․ 7․ 8 ։ Երեմ․ Իդ 9 ։ Իե 9 ։ Զաք Ր․ 13 ։
Ծ Սաղ․ Խդ 14 ։
Ի Միք․ Զ․ 15 ։ Անգ․ Ա․ 6 ։
Լ Յովել Ա 4 ։

27 վէրնտող մը պիտի չըլլայ ։ Տէրը
ⁱ Եգիպտոսի պալարներով, ʲ թանչով, քոսոտութեամբ ու եռքով
պիտի զարնէ քեզ, որ անոնցմէ
28 չկարենաս բժշկուիլ ։ Տէրը ապշութիւնով՝ կուրութիւնով ու
⁺ սրտաշփոթով պիտի զարնէ քեզ ։
29 Եւ ինչպէս որ կոյրը խաւարի մէջ
ձեռքովը կը խարխափէ, • դուն ալ
կէսօրուան ատենը անանկ պիտի
խարխափես․ ու գործքերուդ մէջ
բարեբաղդութիւն պիտի չունենաս․ և միշտ զրկանք ու յափշտակութիւն պիտի քաշես, ու քեզ
30 ազատող պիտի չըլլայ ։ $ Դուն
կնկան մը պիտի նշանուիս, ու անոր հետ ուրիշը պիտի պառկի․
= տուն պիտի շինես, ու անոր մէջը
դուն պիտի չբնակիս․ Բ այգի պիտի տնկես, ու անոր խաղողը պի-
31 տի չժողվես․ Քու եզդ՝ քու աչքիդ
առջևը պիտի մորթուի, բայց դուն
անկէ պիտի չուտես․ քու էշդ քու
առջևէդ պիտի յափշտակուի, ու
քեզի ետ պիտի չտրուի․ Հօտերդ
քու թշնամիներուդ պիտի մատնուին, ու [illegible] քեզի ազատող
32 պիտի չըլլայ ։ Քու տղաքներդ
ու աղջիկներդ մէկ ուրիշ ժողովուրդի մը պիտի տրուին, և
աչքերդ պիտի տեսնեն, ու ᶜ բոլոր օրը անոնց համար [illegible]
[illegible] պիտի նուաղին․ և
ձեռքդ պիտի չհասնի օգնելու ։
33 Տ Քու երկրիդ արդիւնքը ու քու
բոլոր աշխատութիւնդ քեզի անծանօթ եղած ժողովուրդ մը պիտի
ուտէ․ և դուն ամէն օր միայն զըր-
34 կանք ու ճնշում պիտի քաշես․ Եւ
Ե աչքերուդ տեսած բաներէն պիտի
35 խենդենաս ։ Տէրը Ղ քու ծունկերդ ու սրունքներդ, [illegible] ոտքիդ
թաթէն մինչև գլխուդ գագաթը
դէշ պալարներով պիտի զարնէ, ու
պիտի չկրնաս բժշկութիւն գտնել ։
36 Տէրը Ե պիտի տանի քեզ՝ և քու
վրադ դրած թագաւորդ անանկ
ազգի մը՝ որ ոչ դուն ճանչցած ես,
ոչ ալ քու հայրերդ․ և Է հոն օտար
աստուածներու՝ փայտի ու քարի
37 ծառայութիւն պիտի ընես ։ Եւ
դուն Ր զարմանքի, ու առակի, ծ և
կատակի ենթակայ պիտի ըլլաս ան
բոլոր ժողովուրդներուն մէջը, ուր
38 որ Տէրը քեզ պիտի տանի ։ Ի Արտիդ մէջը շատ սերմ պիտի ցանես,
ու քիչ [illegible] պիտի ժողվես․
քանզի Լ մարախները պիտի ուտեն
39 զանիկայ ։ Այգիներ պիտի տնկես,
ու դարմանես, բայց գինին պիտի
չխմես, ու [illegible] պիտի չժողվես․
քանզի անիկայ որդերը պիտի ու-
40 տեն ։ Քու ամէն սահմաններուդ
մէջ ձիթենիներ պիտի ունենաս,
բայց եղով պիտի չօծուիս․ քանզի
քու ձիթենիներդ իրենց պտուղը
41 պիտի թափեն ։ Տղաքներ ու աղջիկներ պիտի ծնանիս, բայց քուկդ
պիտի չըլլան․ քանզի Ե անոնք գե-
42 րութեան պիտի երթան ։ Բոլոր
ծառերդ ու երկրիդ պտուղները՝
43 խառնիճը պիտի ուտէ ։ Ձեր մէջը
եղող օտարականը՝ քեզմէ գերազանց պիտի ըլլայ, և շատ պիտի
բարձրանայ, ու դուն շատ վար
44 պիտի իջնես ․ Ծ Անիկայ քեզի
փոխ պիտի տայ, բայց դուն
անոր փոխ պիտի չտաս․ Կ անիկայ գլուխ պիտի ըլլայ, բայց
45 դուն պոչ պիտի ըլլաս ։ Եւ Հ աս
բոլոր անէծքները քու վրադ պիտի
գան, քեզ պիտի հալածեն, ու
քեզի պիտի հասնին, մինչև որ
դուն բնաջինջ ըլլաս․ որովհետև
քու Տէր Աստուծոյդ խօսքին հնազանդութիւն չըրիր, և քեզի հրամայած պատուիրանքները ու կա-
46 նոնները չպահեցիր․ Եւ անոնք
քու վրադ ու քու սերունդիդ վրայ
Յ նշան ու հրաշք պիտի ըլլան յաւի-
47 տեան ։ Ն Որովհետև դուն՝ Շ ամէն
բանին առատութեանը համար՝
ուրախութեամբ և յօժար սրտով
քու Տէր Աստուծոյդ ծառայու-
48 թիւն չըրիր, Անոր համար դուն անօթութիւնով, ծարաւով, մերկութիւնով, ու ամէն բանի կարօտութիւնով ծառայութիւն պիտի
ընես քու թշնամիներուդ, որոնք
Տէրը քու վրադ պիտի խրկէ․ և
Մ քու պարանոցիդ վրայ երկաթէ
լուծ պիտի դնէ, մինչև որ բնաջինջ
49 ընէ քեզ ։ Յ Տէրը քու վրադ հեռուէն՝ երկրիս ծայրէն Ն արծիւի
թռչելուն պէս մէկ ազգ մը պիտի
բերէ, անանկ ազգ մը՝ որուն լե-
50 զուն դուն չես հասկընար, Պինտերես ազգ մը, Շ որ ծերոց պատիւ
պիտի չընէ, ու տղայոց վրայ գութ
51 պիտի չունենայ․ Եւ անիկայ Ո քու
անասուններուդ պտուղը՝ ու երկրիդ պտուղը պիտի ուտէ, մինչև որ
դուն բնաջինջ ըլլաս․ որովհետև
քեզի ցորեն՝ գինի՝ եղ՝ կովերուդ
ծնունդները ու ոչխարներուդ հօտերը պիտի չթողու, մինչև որ քեզ
52 բնաջինջ ընէ․ Եւ անիկայ Չ քու
բոլոր քաղաքներուդ մէջ քեզ պիտի պաշարէ, մինչև որ կործանին
քու բարձր ու ամուր պարիսպներդ,
որոնց դուն ապաւիներ ես՝ քու
բոլոր երկրիդ մէջ․ և քեզ պիտի
պաշարէ քու ամէն քաղաքներուդ
մէջ [illegible] քու բոլոր երկրիդ մէջ, որն
որ քու Տէր Աստուածդ քեզի կու
53 տայ․ Ու պաշարման ատենը՝ և

Ն․ Ք․ զԲ․
1451

Ե Ողբ․ Ա․ 5 ։
Ծ Հմր 12 ։
Կ Հմր 13 ։ Ողբ․ Ա․ 5 ։
Հ Հմր 15 ։
Յ Ես․ Ը․ 18 ։ Եզեկ․ Ժդ․ 8 ։
Ն Նեեմ․ Թ․ 35, 36, 37 ։
Շ Դւ․ Լբ․ 15 ։
Մ Երեմ․ Իը․ 14 ։
Յ Երեմ․ Ե․ 15 ։ Զ․ 22, 23 ։ Ղու․ Ժթ․ 43 ։
Ն Երեմ․ Խը․ 40 ։ Խթ․ 22 ։ Ողբ․ Դ․ 19 ։ Եզեկ․ Ժէ․ 3, 12 ։ Ովս․ Ը․ 1 ։
Շ Բ Մն․ Լզ․ 17 ։ Ես․ Խէ․ 6 ։
Ո Հմր 33 ։ Ես․ Ա․ 7 ։ Կբ․ 8 ։
Չ Դ Թագ․ Իե․ 1, 2, 4 ։

Ն · Ք · ԴՔ ·
1451

ղՂև · ԻԶ · 29 ։ դԹագ · Զ · 28 · 29 ։ Երեմ · ԺԹ · 9 ։ Ողբ · Բ · 20 ։ դ · 10 ։ ըԳլ · Ժդ · 6 ։ ~ Գլ · Ժե · 9 ։

քու թշնամիդ քեզ նեղը ձգած ա-
տենը՝ ղքու որովայնիդ պտուղը՝
քու Տէր Աստուծոյդ քեզի տուած
քու տղաքներուդ և աղջիկներուդ
54 միսը պիտի ուտես ։ Ձեր մէջը
քնքուշ ու խիստ փափուկ մարդը՝
իր եղբօրը ու Նիր ծոցի կնկանը՝ և
իր ողջ թողուցած որդւոցը ~ծուռ
55 աչքով պիտի նայի ․ Որպէս զի իր
ուտելու որդւոցը միսէն անոնց մէ-
կուն չտայ ․ քանզի պաշարման ա-
տենը՝ ու քու թշնամիդ ամէն քա-
ղաքներուդ մէջ քեզ նեղը ձգած
ատենը՝ ~բէն բան մը պիտի չմնայ
56 անոր ։ Ձեր մէջը խիստ քնքուշ
ու փափուկ եղող կնիկը՝ որ իր
փափկութենէն ու քնքուշ ըլլա-
լէն՝ ոտքը գետնի վրայ կոխելու
սորված չէր , իր ծոցի էրկանը՝ իր
57 տղուն՝ իր աղջկանը՝ Եւ "իր ոտ-
քերուն մէջտեղէն ելլող տղու ըն-
կերին՝ ու իր ծնած զաւակներուն
Նծուռ աչքով պիտի նայի ․ քանզի
պաշարման ատենը՝ ու քու թշնա-
միդ քու քաղաքներուդ մէջ քեզ
նեղը ձգած ատենը՝ ամէն բանին
պակսելուն համար՝ զանոնք ծած-
կաբար պիտի ուտէ ։

"Ծն · ԽԹ · 10 ։
ՆՀմր 54 ։

58 Թէ որ դուն աս գրքիս մէջ
գրուած՝ աս օրէնքիս ամէն խօսքե-
րը զգուշութեամբ չկատարես , և
~աս՝ ՔՈՒ ԵՀՈՎԱՅ ԱՍՏՈՒ-
ԾՈՅԴ պատուական ու ահաւոր
59 անունէն չվախնաս , Տէրն ալ՝ բան-
սովոր հարուածներով , մեծ ու
երկարատև հարուածներով , գէշ
ու երկայն հիւանդութիւններով
պիտի զարնէ քեզ և քու սերունդդ ․
60 Ու ըԵգիպտոսի բոլոր հիւանդու-
թիւնները՝ որոնցմէ դուն կը վախ-
նաս , քու վրադ պիտի դարձընէ ․
ու անոնք քեզի պիտի փակչին ։
61 Նաև աս օրինաց գրքին մէջը
չգրուած ամէն հիւանդութիւնը՝ ու
ամէն հարուածը՝ Տէրը քու վրադ
պիտի բերէ , մինչև որ դուն բնա-
62 ջինջ ըլլաս ։ Եւ քու Տէր Աստու-
ծոյդ խօսքին հնազանդութիւն չը-
նելուդ համար , դուք՝ որ ~շատու-
թեան կողմանէ երկինքի աստղե-
րուն պէս էիք , ‡խիստ սակաւա-
63 թիւ պիտի մնաք ․ Եւ ինչպէս որ
Տէրը ձեզի աղէկութիւն ընելով ու
ձեզ շատցընելով՝ +ձեր վրայ ուրա-
խացաւ , անանկ ալ ձեզ կորսնցը-
նելով ու բնաջինջ ընելով՝ •ձեր
վրայ պիտի ուրախանայ , և պիտի
ջնջուիք ան երկրին վրայէն , ուր որ
հիմա կ'երթաք զանիկայ ժառան-
64 գելու ։ Եւ Տէրը երկրիս մէկ ծայ-
րէն մինչև մէկալ ծայրը՝ §բոլոր
ժողովուրդներուն մէջ պիտի ցրուէ
քեզ , ու ~հոն ծառայութիւն պի-

~Եւ · Զ · 3 ։
բԴան · Թ · 12 ։
ըԳլ · Է · 15 ։
~Գլ · Ժ · 22 ։ Նեեմ · Թ · 23 ։
‡Գլ · Դ · 27 ։
+Գլ · Լ · 9 ։ Երեմ · ԼԲ · 41 ։
•Առակ · Ա · 26 ։ Ես · Ա · 24 ։
§Ղև · ԻԶ · 33 ։ Գլ · Դ · 27 · 28 ։ Նեեմ · Ա · 8 ։ Երեմ · ԺԶ · 13 ։
~Հմր 36 ։

տի ընես օտար աստուածներու
փայտի ու քարի , որոնք ոչ դուն
ճանչցեր էիր՝ ոչ ալ քու հայրերդ ․
65 Եւ Բան ազգերուն մէջը հանգըս-
տութիւն պիտի չգտնես , ու ոտ-
քիդ թաթին հանգչելու տեղ պի-
տի չըլլայ ․ Գև հոն Տէրը քեզի դո-
ղացող սիրտ , աչքի նուաղում , ու
Դհոգիի տրտմութիւն պիտի տայ ․
66 Եւ քու կեանքդ քու առջևդ կախ-
ման մէջ պիտի ըլլայ , ու գիշեր
ցորեկ պիտի վախնաս , և քու
կեանքիդ վրայ ապահով պիտի չըլ-
67 լաս ․ Ու սրտիդ ահուդողէն , և
Եաչքերուդ տեսած բաներէն , առ-
տաւօտուն պիտի ըսես՝ Երանի թէ
իրիկուն ըլլար , ու իրիկունն ալ
պիտի ըսես՝ Երանի թէ առտու ըլ-
68 լար ։ Եւ Տէրը Ենաւերով Եգիպ-
տոս պիտի դարձընէ քեզ ան ճամ-
բայով , որուն համար քեզի ըսի
թէ՝ անիկայ ըմէյմըն ալ պիտի
չտեսնես ․ և հոն ծառաներ ու ա-
ղախիններ ըլլալու պիտի ծախուիք
ձեր թշնամիներուն ․ և ծախու առ-
նող պիտի չըլլայ ։

Ն · Ք · ԴՔ ·
1451

ԲԱմով · Թ · 4 ։
ԳՂև · ԻԶ · 36 ։
ԴՂև · ԻԶ · 16 ։
ԵՀմր 34 ։ ԴՅոբ · Է · 4 ։
ԵՈվս · Ը · 13 ։ Թ · 3 ։
ըԳլ · ԺԷ · 16 ։

## ԳԼ · ԻԹ

1 Մովսէս հնազանդութեան կը յորդորէ զա-
նոնք , անոնց տեսած գործքերը յիշեցնելով ։
10 Ամէնքը կը ներկայանան Աստուծոյ առջև
անոր հետ ուխտ ընելու ։ 18 Իր չարութեանը
մէջ հանդարտ սրտով կեցողին վրայ գալու
բարկութիւնը ։ 29 Ծածուկ բաները Աստու-
ծոյ կը վերաբերին ։

1 Ասոնք են ան ուխտին խօսքերը ,
որ Տէրը Մովսէսին հրամայեց
Իսրայէլի որդւոցը հետ ընելու Մո-
վաբի երկրին մէջ , ~անոնց հետ
Քորեբի վրայ ըրած ուխտէն զատ ։
2 Ուստի Մովսէս բոլոր Իսրայէլը
կանչելով՝ անոնց ըսաւ ․ ԲԴուք
տեսաք ան ամէնը՝ որ Տէրը ձեր
աչքերուն առջևը Եգիպտոսի երկրին
մէջ ըրաւ Փարաւոնին , և անոր
բոլոր ծառաներուն , ու անոր բոլոր
3 երկրին ․ Այսինքն՝ Գան մեծ փոր-
ձութիւնները , նշանները ու մեծ
հրաշքները , որոնք դուն քու աչ-
4 քերովդ տեսար ․ Եւ ԴՏէրը մինչև
այսօր չտուաւ ձեզի ~իմանալու սիրտ մը՝
որ իմանաք , և ոչ աչքեր՝ որ տես-
նէք , ոչ ալ ականջներ՝ որ լսէք ։
5 Ե Ու ես քառսուն տարի անապա-
տին մէջ ձեզ պտըտցուցի ․ Զձեր
վրայի լաթերը չհինցան , ու ոտ-
6 քերուդ կօշիկները չմաշեցան ․ Է Հաց
չկերաք ու գինի կամ օղի չխմեցիք ,
որ գիտնաք թէ ես ձեր Տէր Աս-
7 տուածն եմ ։ Ու երբոր աս տեղ
եկաք՝ ըՍեհոնի Եսեբոնի թագաւո-
րը և Բասանի Ովգ թագաւորը մեր
առջևը ելան՝ մեզի հետ պատերազ-
մելու , ու մենք զարկինք անոնք ․

~Գլ · Ե · 2 · 3 ։
ԲԵլ · ԺԹ · 4 ։
ԳԳլ · Դ · 34 ։ Է · 19 ։
ԴՏես Ես · Զ · 9 · 10 ։ Կդ · 17 ։ Յով · Ր · 43 ։ Գոր · ԻԸ · 26 · 27 ։ Եփե · Դ · 18 ։ Բ Թես · Բ · 11 · 12 ։
ԵԳլ · Ա · 3 ։ Ը · 2 ։
ԶԳլ · Ը · 4 ։
ԷՏես Ել · ԺԶ · 12 ։ Գլ · Ը · 3 ։ Սաղ · ՃԸ · 24 · 25 ։
ըԹու · ԻԱ · 23 · 24 · 33 ։ Գլ · Բ · 32 ։ Գ · 1 ։

Ն. Ք. Գ. Ք. 1451

8 Եւ անոնց երկիրը առինք, ու Ռուբէ-
նեանց, Գադեանց ու
Մանասէի կէս ցեղին ժառանգու-
9 թիւն տուինք։ Ուստի աս ուխ-
տին խօսքերը պահեցէք ու կատարեցէք,
որ ձեր ամէն գործքին մէջ յաջո-
ղութիւն գտնէք։
10 Այսօր դուք ամէնքդ ձեր Տէր
Աստուծոյն առջևը կը կայնիք. ձեր
*ցեղերուն իշխանները", ձեր ծե-
րերը, ձեր ոստիկանները ու բոլոր
11 Իսրայէլի մարդիկները, Ձեր տղաք-
ները, ձեր կնիկները, և քու բանա-
կիդ մէջը եղող օտարականդ, քու
փայտ կտրողէդ մինչև քու ջրկիրդ.
12 Որ քու Տէր Աստուծոյդ ուխտին ու
անոր երդումին մէջ մտնես, որն
որ այսօր քու Տէր Աստուածդ քե-
13 զի հետ կ'ընէ, Որպէս զի քեզ այս-
օր իրեն ժողովուրդ հաստատէ,
և ինքը քեզի Աստուած ըլլայ,
ինչպէս որ քեզի ըսաւ, ու ինչ-
պէս որ քու հայրերուդ՝ Աբրահա-
մին, Իսահակին ու Յակոբին եր-
14 դում ըրաւ։ Ու ես աս ուխտը
և աս երդումը մինակ ձեզի հետ չեմ
15 ըներ, Հապա այսօր մեզի հետ մեր
Տէր Աստուծոյն առջևը հոս կայ-
նողներուն հետը, և այսօր մեզի
հետ հոս չեղողներուն հետն ալ.
16 Քանզի դուք գիտէք, թէ ինչպէս
բնակեցանք Եգիպտոսի երկրին մէջ,
և ինչպէս անցանք ան ազգերուն
17 մէջէն՝ որ դուք անցաք. Ու
անոնց քովը եղած անոնց զարշե-
լի բաները, և անոնց փայտէ՝ քա-
րէ՝ արծաթէ ու ոսկիէ կուռքերը
18 տեսաք։ Չըլլայ որ ձեր մէջը էրիկ
մարդ կամ կնիկ մարդ՝ կամ ազ-
գատոհմ՝ կամ ցեղ մը գտնուի,
որ իր սիրտը այսօր մեր Տէր Աս-
տուծմէն խոտորեցընելով, երթայ
ան ազգաց աստուածներուն ծառա-
յութիւն ընէ. չըլլայ որ ձեր մէջը
թոյն ու դառնութիւն բերող ար-
19 մատ մը գտնուի. Եւ չըլլայ որ մէ-
կը աս անէծքին խօսքերը լսելով՝
սրտին մէջը իրեն օրհնութիւն տա-
լով՝ ըսէ. Թէև իմ սրտիս յամա-
ռութեանը մէջ քալեմ, ինծի խա-
ղաղութիւն կ'ըլլայ, և այսպէս ա-
նիկայ իր ծարաւութեանը վրայ գի-
20 նովութիւն աւելցընէ. Տէրը պի-
տի չհաճի անոր խնայելու, հապա
ան ատենը Տէրոջը բարկութիւնը
ու նախանձը ան մարդուն վրայ
պիտի բորբոքի, և աս գրքիս մէջը
գրուած ամէն անէծքը անոր վրայ
պիտի իջնէ, ու Տէրը անոր ա-
նունը երկինքին տակէն բնաջինջ
21 պիտի ընէ. Եւ Տէրը աս օրինաց
գրքիս մէջը գրուած ուխտին ամէն
անէծքներուն համեմատ անոր վրայ
չարիք հասցնելու համար՝ զանիկայ
Իսրայէլին բոլոր ցեղերէն պիտի
22 զատէ, Եւ պիտի ըսէ յետագայ
ազգը՝ այսինքն ձեզմէ ետքը ելլող
զաւակներնիդ՝ ու հեռու երկրէ ե-
կող օտարականը, երբոր տեսնեն
ան երկրին հարուածները, ու անոր
հիւանդութիւնները, որոնցմով
23 Տէրը զանիկայ պիտի նեղէ. Ու
երբոր տեսնեն թէ ան բոլոր երկիրը՝
ծծումբ, աղ ու այրած ըլլալով,
հոն բան մը չցանուիր, ու պտուղ
մը չբերեր, և խոտ մը չբուսնիր,
Սոդոմին՝ Գոմորին՝ Ադմային ու
Սեբոյիմին աւերմանը պէս, որոնք
Տէրը իր բարկութեամբը ու սրտմը-
24 տութեամբը բնաջինջ ըրաւ. Նա-
և ամէն ազգերը պիտի ըսեն. Ին-
չո՞ւ համար Տէրը աս երկրին այս-
պէս ըրաւ. աս մեծ սրտմտութեան
ու բարկութեան պատճառը ի՞նչ է։
25 Եւ անոնց պիտի ըսեն. Պատճառը
աս է որ՝ անոնք մերժեցին իրենց
հարցը Տէր Աստուծոյն ուխտը, որն
որ անոնց հետ ըրեր էր՝ զանոնք
Եգիպտոսի երկրէն հանած ատենը,
26 Եւ գացին ուրիշ աստուածներու
ծառայեցին, ու անոնց երկրպա-
գութիւն ըրին, անանկ աստուած-
ներու՝ որ իրենք բնաւ չէին ճանչ-
ցած, և որ Տէրը որոշած չէր ա-
27 նոնց. Ուստի Տէրոջը բարկութիւ-
նը ան երկրին դէմ բորբոքեցաւ,
որ աս գրքիս մէջը գրուած ամէն
28 անէծքները անոր վրայ բերէ. Եւ
Տէրը բարկութեամբ՝ սրտմտու-
թեամբ ու մեծ զայրացմամբ զա-
նոնք իրենց երկրէն արմատաքի խը-
լելով՝ մէկ ուրիշ երկիր մը նետեց,
29 ինչպէս որ այսօր կը տեսնուի։ Ծա-
ծուկ բաները մեր Տէր Աստուծոյն
կը վերաբերին, բայց յայտնուած
բաները՝ մեզի ու մեր որդւոցը տը-
րուած են յաւիտեան, որ աս օրէն-
քիս ամէն խօսքերը կատարենք։

## ԳԼ. Լ

1 Ապաշխարողներուն խոստացուած մեծ ողոր-
մութիւնները։ 11 Աստուծոյ պատուիրանք-
ներուն դիւրիմանալի ըլլալը։ 15 Մահը ու
կեանքը ժողովուրդին առջևը կը դրուի։

1 Ու երբոր աս քեզի ցուցուցած
բաներս՝ թէ անէծքը և թէ օրհ-
նութիւնը քու վրադ գան, ու
դուն անոնք քու սրտիդ մէջը նո-
րէն յիշես ան բոլոր ազգերուն մէ-
ջը, ուր որ քու Տէր Աստուածդ
2 քեզ պիտի վռնտէ, Եւ դուն քու
Տէր Աստուծոյդ դառնաս, և բոլոր
սրտովդ ու բոլոր հոգիովդ անոր
խօսքին հնազանդիս, թէ դուն և
թէ քու որդիքդ, ինչպէս որ ես
3 այսօր քեզի պատուիրեցի, Քու

Ռ Թուոց. ԼԲ. 33։ Գլ. Գ. 12, 13։
Ժ Գլ. Դ. 6։ Յեսու. Ա. 7։ Գ Թագ. Բ. 3։
Է Յես. Ա. 7։
* Եբր. Ձեր իշխանները. ձեր ցեղերը։
Լ Տես Յես. Թ. 21, 23, 27։
Խ Նեեմ. Ժ. 29։
Ծ Գլ. ԻԸ. 9։
Կ Ել. Զ. 7։ Հռն. ԺԷ.
Յ Երեմ. ԼԱ. 31, 32, 33։ Եբր. Ը. 7, 8։
Շ Տես Գործ. Բ. 39։
Ճ Գլ. ԺԱ. 16։
Մ Գործ. Ը. 23։ Եբր. ԺԲ. 15։
Յ Թուոց. ԺԵ. 39։ Ժող. ԺԱ. 9։
Ն Ես. Լ. 1։
Շ Եզեկ. ԺԴ. 7, 8։
Ո Սաղ. ՀԴ. 1։
Չ Սաղ. ՀԹ. 5։ Եզեկ. ԻԳ. 25։
Պ Գլ. Թ. 14։

Ն. Ք. Գ. Ք. 1451

Ջ Մատ. ԻԴ. 51։
Ռ Սաղ. ՃԷ. 34։ Երեմ. ԺԷ. 6։ Սոփ. Բ. 9։
Ս Ծն. ԺԹ. 24, 25։ Երեմ. Ի. 16։
Վ Գ Թագ. Թ. 8, 9։ Երեմ. ԻԲ. 8, 9։
Տ Դան. Թ. 11, 13, 14։
Ր Գ Թագ. ԺԴ. 15։ Բ Մն. Է. 20։ Սաղ. ԾԲ. 5։ Առակ. Բ. 22։
Ս Ղև. ԻԶ. 40։ Գլ. ԻԸ։
Բ Գլ. Դ. 29, 30։ Գ Թագ. Ը. 47, 48։
Գ Նեեմ. Ա. 9։ Ես. ԾԵ. 7։ Ողբ. Գ. 40։ Յովել. Բ. 12, 13։
Դ Սաղ. ՃԶ. 45։ Եզ. 1, 4։ Երեմ. ԻԹ. 14։ Ողբ. Գ. 22, 32։

Ն . ք . գ՟ . 1451

Ի Սաղ . ճխէ . 2 . Երեմ . լբ . 37 . Եզեկ . ԼԴ . 13 . ԼԶ . 24 . Ղ Գլ . ԻԸ . 64 . Նեեմ . ա . 9 .

Տէր Աստուածդ ալ քեզ գերութե-
նէն դարձնելով՝ պիտի ողորմի քե-
զի , ու Ենորէն պիտի ժողվէ քեզ
ան ամէն ազգերէն , որոնց մէջը քու
Տէր Աստուածդ քեզ ցրուեր էր ։
4 Ղթէ որ մինչև երկինքին ծայրը վը-
ռընտուած ալ ըլլաս , քու Տէր Աս-
տուածդ քեզ անկէ պիտի ժողվէ ,
5 ու անկէ պիտի առնէ քեզ . Եւ քու
Տէր Աստուածդ քու հայրերուդ
ժառանգած երկիրը պիտի դարձնէ
քեզ , ու զանիկայ պիտի ժառան-
գես , և քեզի աղէկութիւն ընելով՝
քու հայրերէդ աւելի պիտի շատ-

Է Գլ . Ժ . 16 . Երեմ . լբ . 39 . Եզեկ . ԺԱ . 19 . ԼԶ . 26 .

6 ցընէ քեզ . Եւ Էքու Տէր Աստուածդ
քու սիրտդ և քու որդւոցդ սիրտը
պիտի թլփատէ , որպէս զի քու
Տէր Աստուածդ բոլոր սրտովդ ու
բոլոր հոգիովդ սիրես , որ ապրիս ,
7 Եւ քու Տէր Աստուածդ՝ աս բոլոր
անէծքները քու թշնամիներուդ վը-
րայ՝ քեզ ատողներուն ու հալա-
ծողներուն վրայ պիտի դարձնէ ։
8 Եւ դուն պիտի դառնաս , ու Տէրո-
ջը խօսքին հնազանդիս , ու կատա-
րես անոր բոլոր պատուիրանքները՝
որոնք ես այսօր քեզի կը պատուի-

Ը Գլ . ԻԸ . 11 .

9 րեմ . ԸԵւ քու Տէր Աստուածդ
քու ձեռացդ բոլոր գործքերը՝ որո-
վայնիդ պտուղը՝ անասուններուդ
պտուղը ու երկրիդ պտուղը շատ-
ցընելով՝ քեզի յաջողութիւն պի-
տի տայ . քանզի Տէրը աղէկու-

Թ Գլ . ԻԸ . 63 . Երեմ . լբ . 41 .

թիւն ընելով՝ Թնորէն պիտի ուրա-
խանայ քու վրադ , ինչպէս որ քու
հայրերուդ վրայ ուրախացաւ ,
10 Երբոր դուն քու Տէր Աստուծոյդ
խօսքին հնազանդիս , ու աս օրինաց
գրքին մէջը գրուած անոր պա-
տուիրանքները ու կանոնները պա-
հես , և բոլոր սրտովդ ու բոլոր հո-
գիովդ քու Տէր Աստուծոյդ դառ-
նաս ։

Ժ Եա . խժ . 19 .

11 Քանզի աս պատուիրանքը որ ես
այսօր քեզի կը պատուիրեմ , Ժքե-
զի անիմանալի չէ , ու քեզմէ հե-

Է Հռով . Ժ . 6 , Է ։

12 ռու ալ չէ ։ ԷԱնիկայ երկինքը չէ ,
որ ըսես թէ , Մեզի համար ո՞վ պի-
տի ելլէ երկինքը , և անիկայ մեզի
պիտի բերէ , որ լսենք ու ընենք .
13 Եւ անիկայ ծովուն անդիի կողմն
ալ չէ , որ ըսես թէ , Մեզի համար
ծովուն անդիի կողմը ո՞վ պիտի
անցնի , ու զանիկայ մեզի պիտի
14 բերէ , որ լսենք ու ընենք . Քանզի
աս խօսքը քեզի շատ մօտ է , քու
բերնիդ ու սրտիդ մէջն է , որ դուն
անիկայ կատարես ։

Լ Հմր 1 , 19 . Գլ . ԺԱ . 26 .

15 Նայէ՛ , ես այսօր՝ կեանքը ու
բարին , մահը ու չարը քու առջևդ
16 դրի . Որովհետև ես այսօր քեզի կը
պատուիրեմ , որ քու Տէր Աս-
տուածդ սիրես անոր ճամբանե-
րուն մէջը քալես , ու անոր պա-
տուիրանքները՝ կանոնները ու դա-
տաստանները պահես , որ ապ-
րիս ու շատնաս , և քու Տէր Աս-
տուածդ քեզ օրհնէ ան երկրին մէ-
ջը , ուր որ կ'երթաս ժառանգելու
17 համար . Բայց թէ որ քու սիրտդ
դառնայ , ու հնազանդութիւն չը-
նես , հապա մոլորելով՝ ուրիշ աս-
տուածներու երկրպագութիւն ը-

Ի Գլ . Դ . 26 . Ը . 19 .

18 նես , ու զանոնք պաշտես , Ի Ձեզի
այսօր կը ծանուցանեմ , որ ան-
շուշտ պիտի կորսուիք , — երկար
կեանք պիտի չունենաք ան երկրին
վրայ , ուր որ մտնելու ու անիկայ
ժառանգելու համար՝ Յորդանանէն

Ժ Գլ . Գ . 26 . Լա . 28 . Լ Հմր 15 .

19 կ'անցնիք . ԺԱյսօր երկինքը ու
երկիրը վկայ կը բռնեմ ձեզի , որ
Լկեանքը ու մահը , օրհնութիւնը ու
անէծքը ձեր առջևը դրի . ուրեմն
կեանքը ընտրէ որ ապրիս՝ դուն և
20 քու սերունդդ . Քու Տէր Աս-
տուածդ սիրելով՝ անոր խօսքին
հնազանդութիւն ընես , ու անոր

Հ Սաղ . ԻԷ : 1 . Կզ . 9 : Յով . ԺԱ . 25 .

յարիս , ( վասն զի քու Հկեանքդ ու
օրերուդ երկայնութիւնը ան է , )
որ դուն բնակիս ան երկրին վրայ ,
որն որ Տէրը քու հայրերուդ՝ Աբ-
րահամին՝ Իսահակին ու Յակոբին
երդում ըրաւ անոնց տալու ։

## ԳԼ . ԼԱ

1 Մովսէս կը քաջալերէ ժողովուրդը , 7 ու Յեսուն ։ 9 Օրէնքը քահանաներուն կը յանձնէ՝ որ եօթներորդ տարին ժողովուրդին ականջներուն կարդան . 14 Աստուած Յեսուին պատուէր կու տայ , 19 ու երգ մը՝ որ ժողովուրդին վկայութիւն մը ըլլայ , 24 Մովսէս օրինաց գիրքը Ղևտացւոց կը յանձնէ՝ որ պահեն . 28 ու գալու բաները հրապարակաւ ծերերուն կը ծանուցանէ ։

1 Եւ Մովսէս գնաց բոլոր Իսրայէլին
2 զրուցեց աս խօսքերը . Ու ա-
նոնց ըսաւ . ԱԵս այսօր հարիւր
քսան տարեկան եմ . ալ Բելլելու
ու մտնելու կարողութիւն չունիմ .
և Տէրը ինծի ըսաւ . ԳԴուն աս

Ա Եւ . Է . 7 . Գլ . ԼԴ . 7 . Բ Թու . ԻԷ . 17 ; Գ Թագ . Գ . 7 . Գ Թու . Ի . 12 . ԻԷ . 13 . Գլ . Գ . 27 . Դ Գլ . Թ . 3 .

3 Յորդանանէն պիտի չանցնիս . Քու
Տէր Աստուածդ Դինքը քու առ-
ջևդ պիտի անցնի , ու աս ազգերը
քու առջևէդ ինքը պիտի կորսըն-
ցընէ , և դուն անոնց ժառանգու-
թեանը պիտի տիրես . — ԻՏէ-
րոջը ըսածին պէս՝ Յեսուն պիտի

Ի Թու . ԻԷ . 21 . Գլ . Գ . 28 . Ղ Գլ . Գ . 21 . Ի Թու . ԻԱ . 24 , 33 .

4 անցնի քու առջևդ . ՂԵւ Տէրը ա-
նոնց այնպէս պիտի ընէ , Ի ինչպէս որ
Ամորհացւոց Սեհոն ու Ովգ թագա-
ւորներուն՝ և անոնց երկրին ըրաւ ,

Ը Գլ . Է . 2 .

5 զանոնք բնաջինջ ընելով . Եւ ԸՏէ-
րը անոնք ձեր ձեռքը պիտի տայ ,
ու իմ ձեզի բոլոր պատուիրածիս

Թ Յես . Ժ . 25 . Ա Մն . ԻԲ . 13 . Ժ Գլ . Ա . 29 . Է . 18 .

6 պէս պիտի ընէք անոնց , Թ Ուժովցէ՛ք , ու քաջ եղէք , Ժմի վախ-
նաք , ու անոնց երեսէն մի՛ զար-
հուրիք . քանզի քու Տէր Աս-

Ն. Ք. Գ. Ք. 1451

տուածդ էինքը քու հետդ կ'եր-
թայ . ևանիկայ քեզ չթողուր ,
ու քեզ երեսէ չձգեր ։
7 Եւ Մովսէս Յեսուն կանչեց ,
ու բոլոր Իսրայէլին առջեւը անոր
ըսաւ . Ուժովցիր , ու քաջ ե-
ղիր . քանզի աս ժողովուրդը դուն
պիտի տանիս ան երկիրը , որն
որ Տէրը անոնց հայրերուն եր-
դում ըրաւ անոնց տալու . ու
զանիկայ դուն պիտի ժառան-
8 գեցընես անոնց ։ Եւ քու առ-
ջեւէդ գացողը՝ նոյն ինքն Տէրն է ,
անիկայ քու հետդ պիտի ըլլայ ,
անիկայ քեզ պիտի չթողու , ու
քեզ երեսէ պիտի չձգէ . մի՛ վախ-
նար , ու մի՛ զարհուրիր ։
9 Արդ՝ Մովսէս աս օրէնքը գրեց ,
և զանիկայ Տէրոջը ուխտին տա-
պանակը վերցընող Ղեւտացի քահա-
նաներուն , ու Իսրայէլի բոլոր ծե-
10 րերուն տուաւ . Եւ Մովսէս անոնց
պատուիրելով ըսաւ . Ամէն եօթ-
ներորդ տարին՝ թողութեան տա-
րույն ատենը՝ տաղաւարահարաց
11 տօնին , Երբոր բոլոր Իսրայէլը կու
գայ քու Տէր Աստուծոյդ առջեւը
երեւնալու՝ անոր ընտրած տեղը ,
աս օրէնքը բոլոր Իսրայէլին առջեւը
աս օրէնքը պիտի *կարդաք , որ
12 լսեն ։ †Ժողվեցէք ժողովուրդը ,
էրիկները՝ կնիկները՝ տղաքները՝ ու
քաղաքներդ եղող օտարականդ , որ
լսեն , և սորվելով՝ ձեր Տէր Աստուծ-
մէն վախնան , ու աս օրէնքիս բո-
լոր խօսքերը պահեն ու կատարեն .
13 Եւ անոնց չգիտցող տղաքները
լսելով , ձեր Տէր Աստուծմէն
վախնալ սորվին , բոլոր ան օրերուն
մէջը , որչափ որ պիտի ապրիք ան
երկրին վրայ , որն որ ժառանգելու
համար Յորդանանէն կ'անցնիք ։
14 Եւ Տէրը Մովսէսին ըսաւ . Ահա
մեռնելու օրերդ մօտեցաւ . Յեսուն
կանչէ , ու ժողովքի խորանին մէջը
ներկայացէք , որ անոր պատուէր
տամ ։ Ուստի Մովսէս ու Յեսու
գացին ժողովքի խորանին մէջը ներ-
15 կայացան ։ Եւ Տէրը ամպի սիւ-
նով խորանին մէջը երեւցաւ , ու ամ-
պի սիւնը խորանին դրանը վրայ
16 կայնեցաւ ։ Եւ Տէրը Մովսէսին ը-
սաւ . Ահա դուն քու հայրերուդ
հետ պիտի ննջես , ու աս ժողո-
վուրդը պիտի ելլէ , ու իր գացած
երկրին օտար աստուածներուն
ետեւէն երթալով՝ անոր մէջ շնու-
թիւն պիտի ընէ , և զիս պիտի
թողու , ու իրեն հետ ըրած ուխտս
17 պիտի խափանէ ։ Եւ ան օրը իմ
բարկութիւնս անոնց վրայ բորբո-
քելով՝ զանոնք պիտի մերժեմ ,
ու երեսս անոնցմէ պիտի ծածկեմ ,
ու բնաջինջ պիտի ըլլան . և շատ
չարիքներու ու նեղութիւններու
հանդիպելով՝ ան օրը պիտի ըսեն .
Մեր Աստուածը մեր մէջը չըլլա-
լուն համար չէ՞ որ մենք աս չարիք-
18 ները կը կրենք ։ Եւ ան օրը՝ ես
իմ երեսս բոլորովին պիտի ծած-
կեմ՝ անոնց ըրած բոլոր չարու-
թեանը համար , որովհետեւ ուրիշ
19 աստուածներու դարձան ։ Ուստի
հիմա աս երգը գրեցէք , ու Իսրա-
յէլի որդւոցը սորվեցուցէք , զա-
նիկայ անոնց բերանը դնելով , որ-
պէս զի աս երգը Իսրայէլի որդւոցը
մէջ ինծի վկայութեան համար ըլ-
20 լայ ։ Քանզի անոնք պիտի տանիմ
ան կաթ ու մեղր բղխող երկիրը ,
որուն համար ես անոնց հայրերուն
երդում ըրի . և անոնք պիտի ու-
տեն ու կշտանան և գիրնան . ու
ուրիշ աստուածներու դառ-
նալով և անոնց ծառայութիւն ը-
նելով , զիս պիտի սրդողցընեն , ու
21 իմ ուխտս պիտի խափանեն ։ Իսկ
երբոր անոնք շատ չարիքներու ու
նեղութիւններու հանդիպին , աս
երգը անոնց առջեւը վկայութիւն
պիտի տայ . որովհետեւ անոնց զա-
ւակներուն բերնէն պիտի չմոռ-
ցուի . վասն զի գիտեմ անոնց
խորհուրդը՝ որ այսօր կ'ընեն ,
քանի որ դեռ իմ երդումովս խոս-
տացած երկիրս տարած չեմ զա-
22 նոնք ։ Ուստի Մովսէս նոյն օրը աս
երգը գրեց , ու Իսրայէլի որդւոցը
սորվեցուց անիկայ ։
23 Եւ Տէրը Նաւէի որդւոյն Յե-
սուին պատուիրելով ըսաւ . Զօ-
րացիր ու քաջ եղիր . քանզի Իս-
րայէլի որդիքը դուն պիտի տանիս
ան երկիրը , որուն համար անոնց
երդում ըրի . ու ես քու հետդ պի-
տի ըլլամ ։
24 Ու երբոր Մովսէս աս օրէնքիս
բոլոր խօսքերը մէկ գրքի մը
25 մէջ գրեց լմնցուց , Տէրոջը ուխ-
տին տապանակը վերցընող Ղեւտա-
ցիներուն պատուիրեց Մովսէս՝
26 ու ըսաւ . Աս օրէնքիս գիրքը
առէք , ու զանիկայ ձեր Տէր
Աստուծոյն ուխտի տապանակին
քովը դրէք , որ հոն քեզի դէմ
27 վկայութեան համար ըլլայ . Քան-
զի ես քու ապստամբութիւնդ ,
ու քու խստապարանոցիդ խստութիւնը
գիտեմ . ահա այսօր որ տակաւին
ես ձեզի հետ ողջ եմ՝ դուք Տէրոջը
դէմ ապստամբութիւն կ'ընէք , ալ
որչափ աւելի իմ մեռնելէս ետքը ։
28 Ձեր ցեղերուն բոլոր ծերերը՝ ու ձեր
ոստիկանները իմ առջեւս ժողվե-
ցէք , որ անոնց աս խօսքերը
զրուցեմ , որ լսեն . և երկինքը ու

Ն. Ք. Գ. Ք. 1451

29 երկիրը վկայ բռնեմ անոնց․ Քանզի
գիտեմ որ իմ մեռնելէս ետքը՝
դուք անշուշտ ⁱ*անօրէնութիւն
պիտի ընէք", ու իմ ձեզի պա-
տուիրած ճամբայէս պիտի խո-
տորիք․ ու ʲետքի օրերը ¹չարիք-
ներու պիտի հանդիպիք․ որովհետև
Տէրոջը առջևը չարութիւն պիտի
ընէք, ու ձեր ձեռքերուն գործքե-
րովը զանիկայ պիտի սրդողցընէք։
30 Ուստի Մովսէս աս երգին խօսքերը
Իսրայէլի բոլոր ժողովքին ականջ-
ներուն ամբողջ կրուցեց։

## ԳԼ․ ԼԲ

1 Մովսէսին երգը՝ որով կը ծանուցանէ Աս-
տուծոյ ողորմութիւնը ու վրէժխնդրութիւնը․
46 Մովսէս կը յորդորէ ժողովուրդը՝ որ իրենց
սիրտը անոր վրայ դնեն․ 48 Աստուած՝ Նա-
բաւ լեռը կը խրկէ Մովսէսը, որ Քանանու
երկիրը տեսնէ, ու մեռնի։

1 ᵃՈ՛վ երկինք՝ ականջ դրէք, որ
խօսիմ․ ու երկիրը իմ բերնիս
խօսքերը թող մտիկ ընէ։
2 ᵇԻմ խրատս անձրևի պէս պիտի
կաթի․ իմ խօսքս ցօղի պէս պիտի
իջնէ․ ᶜանձրևի պէս կանանչեղէնի
վրայ, ու առատ անձրևներու պէս
խոտի վրայ․
3 Քանզի Տէրոջը անունը պիտի
կանչեմ․ ᵈմեր Աստուծոյն պատիւ
տուէք։
4 ᵉԱստուծոյ ᶠգործը կատարեալ
է․ քանզի ᵍանոր ամէն ճամբաները
իրաւունք են․ ʰԱստուած հաւա-
տարիմ է, ու ⁱանիրաւութիւն
չունի․ անիկայ արդար և ուղիղ է․
5 ʲԱնոնք ապականեցան․ իրենց
արատը՝ անոր որդւոցը չէ․ ᵏանիկայ
մէկ ˡխոտորած ու ծռած ազգ
մըն է․
6 ᵐՏէրոջը ըրած հատուցումնիդ
ասիկա՞յ է, ով յիմար ու անմիտ
ժողովուրդ․ անիկայ ⁿքու Հայրդ
չէ՞, որ քեզ ᵒստացաւ, ᵖքեզ
ստեղծեց, ու քեզ հաստատեց․
7 ᵠՀին օրերը մի՛տքդ բեր․ անցած
դարերուն տարիները մտածէ․ ʳքու
հօրդ հարցուր, ու թող քեզի
պատմէ․ քու ծերերուդ հարցուր,
ու թող քեզի ըսեն․
8 Երբոր Բարձրեալը ˢազգերուն
ժառանգութիւն բաժնեց, ու ᵗԱ-
դամի որդիքը տարածեց, ազգե-
րուն սահմանները Իսրայէլի որ-
դւոց թուովը դրաւ․
9 Քանզի ᵘՏէրոջը բաժինը իր ժո-
ղովուրդն է, ու իր ժառանգու-
թեան վիճակը Յակոբն է։
10 Զանիկայ ᵛամայի երկրի մէջ,
անկոխ ու ահագին անապատի մէջ
‡գտաւ․ զանիկայ ‖պաշտպանեց,
ʷխրատեց, ու ˣիր աչքին բիբին
պէս պահեց․
11 ʸԻնչպէս որ արծիւը իր բոյնը կը
գրգռէ, կը շարժի իր ձագերուն
վրայ․ իր թևերը կը տարածէ, զա-
նոնք վրան կառնէ, ու թևերովը
կը վերցընէ,
12 Անանկ ու Տէրը միայն զանիկայ
պտըտցուց, ու անոր հետը օտար
աստուած չկար։
13 ᶻԶանիկայ երկրիս բարձր տեղե-
րուն վրայ §հանեց, որ արտերուն
պտուղը ուտէ․ ու անոր ᵃվէմէն
մեղր, ու ապառաժ վէմէն եղ
ծծել տուաւ․
14 Անոր՝ կովերու իւղ, ու ոչխարնե-
րու կաթ կերցուց, գառներու՝ ու
Բասանի խոյերու՝ և նոխազներու
ճարպով, ու ցորենի *երիկամներով՝ ու
ᶜխաղողին արիւնը՝ գի-
նի խմեցիր։
15 Ու ††Իսրայէլը գիրնալով Նաքա-
ցեց․ (ᵈգիրցար՝ հաստըցար՝ եղ
կապեցիր․) ու ᵉիր Արարիչ Աս-
տուածը ձգեց, և ᶠիր փրկու-
թեան Վէմը արհամարհեց։
16 Օտար աստուածներով ᵍանոր
նախանձը գրգռեցին, ու գարշելի
բաներով զանիկայ սրդողցուցին։
17 ʰԴևերուն զոհ մատուցին, և
ոչ Աստուծոյ, իրենց չգիտցած
աստուածներուն, Նոր՝ ու մօտերս
եղողներուն, որ ձեր հայրերը ա-
նոնցմէ չվախցան։
18 ⁱԴուն քեզ ծնանող Վէմը մոռ-
ցար, ու ʲքեզ ստեղծող Աստուա-
ծը միտքէդ հանեցիր։
19 ᵏԵւ Տէրը տեսնելով զզուեցաւ,
ˡորովհետև իր տղաքները ու աղջիկ-
ները զինքը սրդողցուցին․
20 Ու ըսաւ․ ᵐԱնոնցմէ երեսս ծած-
կեմ, ու տեսնեմ թէ անոնց վեր-
ջը ինչ պիտի ըլլայ․ վասն զի ա-
նոնք ծուռ ազգ մըն են․ ⁿանհաւա-
տարիմ որդիներ են,
21 ᵒԱնոնք չաստուածներով իմ
նախանձս գրգռեցին, ու ᵖիրենց
սնոտի բաներովը զիս սրդողցուցին․
ᵠես ալ անպիտան ժողովրդով մը
անոնց նախանձը պիտի գրգռեմ,
ու անմիտ ազգով մը զանոնք պիտի
սրդողցընեմ․
22 Քանզի ʳիմ բարկութենէս կրակ
վառեցաւ, և դժոխքին մինչև
ներքին տեղուանքը պիտի այրէ․
երկիրը ու անոր արմտիքը պիտի
ուտէ, ու լեռներուն հիմերը պիտի
բռնկցընէ։
23 ˢԱնոնց վրայ չարիքներ պիտի

Ն․ Ք․ Զ․Ք․ 1451

ⁱԳլ․ լբ․5․ Դատ․ բ․ 19․ Ովս․ թ․9․
*Եբր․ պիտի ապականիք․
ʲԾն․ խթ․ 1․ Գլ․ դ․ 30․
¹Գլ․ իը․ 15․

ᵃԳլ․ դ․ 26․ լ․19․ լա․ 28․ Սաղ․ծ․4․ Ես․ ա․2․ Երեմ․ բ․ 12․ զ․19․
ᵇԵս․ ծե․ 10, 11․ ա Կոր․ գ․6, 7, 8․
ᶜՍաղ․ հբ․ 6․ Միք․ ե․7․
ᵈա Մն․ իթ․ 11․
ᵉԵբր․ Վէմն․ բ Թագ․ իբ․ 3․ իգ․ 3․ Սաղ․ ժը․ 2․31․46․ Ամբ․ ա․12․
ᶠբ Թագ․ իբ․31․
ᵍԴան․ դ․ 37․ Յայտ․ ժե․3․
ʰԵրեմ․ ժ․ 10․
ⁱՅոբ․ լդ․ 10․ Սաղ․ ղբ․15․
ʲԳլ․ լա․ 29․
ᵏՄատ․ ժէ․ 16․ Ղուկ․ թ․ 41․ Փիլ․ բ․15․
ˡՍաղ․ ճժզ․ 12․
ᵐԵս․ կդ․16․
ⁿՍաղ․ հդ․ 2․
ᵒՀմր 15․ Ես․ իէ․ 11․ խդ․2․
ᵖԵւ․ ժգ․ 14․ Սաղ․ խդ․1․ հը․ 3․4․
ᵠԶաք․ թ․ 2․ Գոր․ ժէ․26․
ʳԾն․ ժա․ 8․
ˢԵւ․ ժե․ 16․ ժթ․ 5․ ա Թագ․ ժ․ 1․ Սաղ․ հբ․ 71․
ᵗԳլ․ ը․15․ Երեմ․ բ․6․ Ովս․ ժգ․5․
‡Կամ՝ հանգաւ․ ‖Կամ՝ պտըտցուց․

ʷԲ Օր․ դ․ 36․
ˣՍաղ․ ժէ․ 8․ Առակ․ է․ 2․ Զաք․ բ․ 8․
ʸԵւ․ ժթ․ 4․ Գլ․ ա․ 31․ Ես․ լա․ 5․ խզ․ 4․ կգ․9․ Ովս․ ժա․ 3․
ᶻԳլ․ լգ․ 29․ Ես․ ծը․ 14․ Եզեկ․ լզ․ 2․
§Եբր․ հեծուց․
ᵃՅոբ․ իթ․ 6․ Սաղ․ ձա․ 16․
ᵇՍաղ․ ձա․ 16․ Ճխէ․ 14․
*Եբր․ երիկամանցը ճարպով․
ᶜԾն․ խթ․ 11․
††Եբր․ Յեսուրունը․ Գլ․ լգ․ 5․26․ Ես․ խդ․ 2․
ᵈՏես ա Թագ․ բ․ 29․
ᵉԳլ․ լա․ 20․ Նէեմ․ թ․ 25․ Սաղ․ ժէ․ 10․ Երեմ․ բ․ 7․ ե 7․ 28․ Ովս․ ժգ․ 6․
ᶠՀմր 6․ Ես․ ծա․ 13․
ᵍԳլ․ լա․ 16․ Ես․ ա․ 4․
ᵍԳ Թագ․ իբ․ 47․ Սաղ․ ձթ․ 26․ ղե․ 1․
ʰԴ Թագ․ ժգ․ 22․ ա Կոր․ ժ․ 22․
ⁱՂև․ ժէ․ 7․ Սաղ․ ճզ․ 37․ ա Կոր․ ժ․ 20․ Յայտ․ թ․ 20․
ʲԵս․ ժէ․ 10․
ᵏԵրեմ․ բ․ 32․
ᵏԴատ․ բ․ 14․
ˡԵս․ ա․ 2․
ᵐԳլ․ լա․ 17․ Ես․ լ․ 9․ Մատ․ ժէ․ 17․ ⁿՀմր 16․ Սաղ․ հը․ 58․ ᵒԳ Թագ․ ժբ․ 21․ Դ Թագ․ ժզ․ 13․ 26․ Սաղ․ լա․ 6․ Երեմ․ ը․ 19․ ժ․ 8․ ժդ․ 22․ Յովն․ բ․ 8․ Գոր․ ժդ 15․ ᵖՈվս․ ա․ 10․ Հռով․ ժ․ 19․ ʳԵրեմ․ ժե 14․ ժէ․ 4․ Ողբ․ դ․ 11․ ˢԵս․ իզ․ 15․

Ն. Ք. ԳՃ.
1451

ե Սաղ. է. 12, 13։ Եզեկ. ե. 16։
ը Ամբ. գ. 5։
* Կամ՝ կայծակով,
թ Ղև. իզ. 22։
ժ Ողբ. ա. 20։ Եզեկ. է. 15։ բ Կոր. է. 5։
† Եբր. սենեակներէն
ի Եզեկ. ի. 13, 14, 23։
լ Սաղ. ճխ. 8։
խ Ես. իէ. 11։ Երեմ. դ. 22։
ծ Գղ. ե. 29։ Սաղ. ձա. 13։ ճէ. 43։ Ղու. ժթ. 42։
կ Ես. խէ. 7։ Ողբ. ա. 9։
հ Ղև. իզ. 8։ Յես. իգ. 10։ բ Մն. իդ. 24։ Ես. լ. 17։
ձ Սաղ. խդ. 12։ Ես. ծ. 1։ ծբ. 3։
ղ ա Թագ. բ. 2։
ճ ա Թագ. դ. 8։ Երեմ. խ. 3։
մ Ես. ա. 10։
յ Սաղ. ծը. 4։
ն Սաղ. ճխ. 3։ Հռով. գ. 13։
շ Յոբ. ժդ. 17։ Երեմ. բ. 22։ Ովս. ժգ. 12։ Հռով. բ. 5։
ո Սաղ. ղդ. 1։ Հռով. ժբ. 19։ Եբր. ժ. 30։
չ բ Պետ. բ. 3։
պ Սաղ. ճլե. 14։
ջ Դատ. բ. 18։ Սաղ. ճզ. 45։ Երեմ. լա. 20։ Յովել. բ. 14։
ռ գ Թագ. ժդ. 10։ իա. 21։ դ Թագ. թ. 8։ ժդ. 26։
ս Դատ. ժ. 14։ Երեմ. բ. 28։

դիզեմ. ե իմ նետերս անոնց վրայ
նետելով պիտի հատցնեմ։
24 Անօթութեամբ պիտի մաշին,
ու ը *հրատագնապ տենդով, և
դառն ժանտախտով պիտի հատ-
նին, ու թ անոնց վրայ գազաննե-
րուն ակռաները՝ ու գետնի վրայ
սողացողներուն թոյնը պիտի խըր-
կեմ։
25 ժ Դուրսէն սուրը, ու †ներսէն
վախը՝ երիտասարդները ու կոյս
աղջիկները՝ կաթնկեր տղաքները՝
ու ալևոր ծերերը պիտի ջարդեն։
26 Ըսի որ, զանոնք ի ամէն
կողմը ցրուեմ, անոնց յիշատակը
մարդոց մէջէն վերցնեմ,
27 Միայն թէ թշնամիին բարկու-
թենէն վախցայ. չըլլայ որ անոնց
հակառակորդները հպարտանան.
չըլլայ որ լ ըսեն թէ, Աս բոլոր բա-
նը ընողը մեր բարձր ձեռքն է, և
ոչ թէ Տէրը։
28 Քանզի անոնք խորհրդակործոյս
ազգ մըն են, խ ու անոնց մէջ ի-
մաստութիւն չկայ։
29 ծ Երանի թէ իմաստուն ըլլային,
ու աս բանը հասկընային, կ ի-
րենց վախճանը մտածէին։
30 հ Մէկ մարդ մը հազարը ի՞նչպէս
կը հալածէր, ու երկու մարդ տա-
սը հազարը ի՞նչպէս կրնար փախ-
ցընել, թէ որ անոնց Վէմը ձ զա-
նոնք չծախէր, ու Տէրը զանոնք
չմատնէր։
31 Քանզի ղ անոնց վէմը մեր Վէմին
պէս չէ, ու ճ մեր թշնամիները իրենք
դատաւոր ըլլան։
32 Ինչու որ մ անոնց որթը Սոդոմի
որթէն է, ու Գոմորի արտէն է.
անոնց խաղողները թունաւոր խա-
ղողներ են, ու անոնց ողկոյզները
դառն են.
33 Անոնց գինին յ վիշապներուն
ժանտութիւնը՝ ու ն իժերուն մա-
հառիթ թոյնն է։
34 Ասիկայ շ իմ քովս պահուած,
ու իմ շտեմարաններուս մէջ կըն-
քուած չէ՞ արդեօք։
35 ո Իմս է վրէժխնդրութիւնը ու
հատուցումը. անոնց ոտքը սահ-
մանուած ժամանակին պիտի գլորի.
ինչու որ չ անոնց կորստեան օրը
մօտ է, ու անոնց գլխուն գալիք-
ները պատրաստ են։
36 պ Քանզի Տէրը իր ժողովուրդը
պիտի դատէ, ջ ու իր ծառաներուն
վրայ պիտի գթայ, որովհետև պիտի
տեսնէ անոնց տկարութիւնը, երբ-
որ ռ գոցուած ու ձգուած չկայ.
37 Եւ պիտի ըսէ. ս Ո՞ւր են անոնց
աստուածները, ան վէմը, որուն
վրայ իրենց յոյսը դրեր էին.
38 Անոնց զոհերուն ճարպը ուտող-
ները՝ ու թափելու նուէրներուն
գինին խմողները՝ թող ելլեն ու
ձեզի օգնեն, և ձեզի պաշտպան ըլ-
լան։
39 Հիմա նայեցէ՛ք, որ վ ‡ միայն ԵՍ
ԵՄ", ու ր ինծմէ ուրիշ Աստուած
չկայ. ց Ես կը մեռցնեմ, ու ես
կ'ապրեցնեմ. ես կը զարնեմ, ու
ես կը բժշկեմ, ու իմ ձեռքէս ա-
զատող մը չկայ։
40 ւ Քանզի ձեռքս երկինքը վերցը-
նելով՝ կ'ըսեմ. Ես յաւիտեան
կենդանի եմ.
41 փ Թէ որ փայլակի պէս սուրս սը-
րեմ, ու ք ձեռքս դատաստանի եր-
կընցնեմ, իմ թշնամիներուս վը-
րէժխնդրութիւն պիտի ընեմ, և
զիս ատողներուն հատուցում ը-
նեմ։
42 Սպաննուածներուն ու գերինե-
րուն արիւնէն՝ օ թշնամեաց իշ-
խաններուն գլխէն՝ ֆ իմ նետերս
արիւնով պիտի արբեցնեմ, ու
իմ սուրս միս պիտի ուտէ։
43 Ո՛վ ազգեր՝ § անոր ժողովուր-
դին ուրախակից եղէք, քանզի
— իր ծառաներուն արեան վրէժը
պիտի խնդրէ. ե իր թշնամիներէն
վրէժ պիտի առնէ, և գ իր երկրին
ու ժողովուրդին քաւութիւն պի-
տի ընէ։
44 Ուստի Մովսէս՝ Նաւեան Յե-
սուին հետը եկաւ, ու աս երգին
բոլոր խօսքերը ժողովուրդին ա-
45 կանջներուն զրուցեց։ Ու երբոր
Մովսէս աս ամէն խօսքերը բոլոր
46 Իսրայէլին զրուցեց լմնցուց, Ա-
նոնց ըսաւ. տ Ձեր սրտին մէջը դը-
րէք ան ամէն խօսքերը՝ որոնք այսօր
ձեզի վկայութիւն բերի, որ անոնք
ձեր տղոցը պատուիրէք, որ աս օ-
րէնքիս ամէն խօսքերը պահեն ու
47 կատարեն։ Քանզի ասիկայ ձեզի
պարապ բան մը չէ՛. ե որովհետև ձեր
կեանքն է. ու աս բանով երկայ-
նակեաց պիտի ըլլաք ան երկրին
վրայ, որուն համար Յորդանանէն
կ'անցնիք՝ անիկայ ժառանգելու։
48 շ Եւ Տէրը նոյն օրը խօսեցաւ
49 Մովսէսին՝ ըսելով. Աս ե Աբարիմ
լեռը ելիր՝ Մովաբի երկրին մէջը
եղող Երիքովին դիմացի Նաբաւ
լեռը, ու տես Քանանու երկիրը,
որն որ Իսրայէլի որդւոցը կա-
50 լուածք պիտի տամ. Եւ դուն ան
քու ելած լեռանդ վրայ մեռնիս,
ու քու ժողովուրդիդ խառնուիս,
ինչպէս որ ը քու եղբայրդ Ահարոն
Հովր լեռանը վրայ մեռաւ, ու իր
51 ժողովուրդին խառնուեցաւ. Ո-
րովհետև Իսրայէլի որդւոցը մէջ՝
Սին անապատը՝ Կադեսի հակառա-
կութեան Ջուրերուն վրայ՝ թ ինծի

Ն. Ք. ԳՃ.
1451

վ Սաղ. ճբ. 27։ Ես. խա. 4։ խը. 12։
‡ Եբր. Ես ես եմ,
ր Գղ. դ. 35։ Ես. խե. 5, 18, 22։
ց ա Թագ. բ. 6։ դ Թագ. ե. 7։ Յոբ. ե. 18։ Սաղ. կը. 20։ Ովսէ. զ. 1։
ւ Ծն. ժդ. 22։ Ել. զ. 8։ Թու. ժդ. 30։
փ Ես. իէ. 1։ լդ. 5։ կզ. 16։ Եզեկ. իա. 9, 10, 14, 20։
ք Ես. ա. 24։ Նաւ. ա. 2։
օ Յոբ. ժգ. 24։ Երեմ. լ. 14։ Ողբ. բ. 5։
ֆ Երեմ. խզ. 10։
§ Հռով. ժե. 10։
— Յայտ. զ. 10։ ժթ. 2։
ե Հմր 41։
գ Սաղ. ձե. 1։
տ Գղ. զ. 6։ ժա. 18։ Եզեկ. խ. 4։
ե Գղ. լ. 19։ Ղև. ժը. 5։ Առակ. գ. 2, 22։ դ. 22։ Հռով. ժ. 5։
շ Թու. իէ. 12, 13։
ե Թու. լգ. 47, 48։ Գղ. լդ. 1։
ը Թու. ի. 25, 28։ լգ. 38։
թ Թու. ի. 11, 12, 13։ իէ. 14։

անձնաղանդ եղաք . քանզի Իսա-
րայէլի որդւոցը մէջ զիս *չփառա-
52 ւորեցիք ։ Ուստի ան երկիրը
†հեռուէն պիտի տեսնես . բայց
դուն հոն պիտի չմտնես , ան երկի-
րը՝ որ ես Իսրայէլի որդւոցը կու
տամ ։

## ԳԼ . ԼԳ

1 Աստուծոյ վեհափառութիւնը ։ 6 Տասներկու ցեղերուն օրհնութիւնները ։ 26 Իսրայէլի երջանկութիւնը ։

1 Եւ աս է ան օրհնութիւնը՝ որով
Աստուծոյ մարդը Մովսէս իր
մեռնելէն առաջ Իսրայէլի որդինե-
2 րը օրհնեց . Ու ըսաւ .
Տէրը Սինայէն եկաւ , ու Սէի-
րէն անոնց երեցաւ , ու Փառան
լեռնէն փայլեցաւ , ու բիւրաւոր
սուրբերով եկաւ . անոր աջ ձեռ-
քէն՝ օրինաց կրակը ելաւ անոնց
3 Այո՛ , անիկայ ժողովուրդները
կը սիրէ . Բոլոր սուրբերը քու
ձեռքդ են . ու անոնք քու խօս-
քերդ ընդունելու համար , քու
ոտքերուդ քովը կը նստին ։
4 Մովսէս մեզի տուաւ օրէնքը ,
Յակոբի ժողովքին ժառան-
գութիւնը ։
5 Ու երբոր ժողովուրդին գլխա-
ւորները Իսրայէլի ցեղերուն հետ
մէկտեղ ժողվուեցան , ինքը ‡Իս-
րայէլի մէջ իշխան" եղաւ ։
6 Ռուբէնը թող ապրի ու չմեռ-
նի , և անոր ժողովուրդը շատւոր
ըլլան ։
7 Եւ Յուդային համար աս բանը
ըսաւ . Ո՛վ Տէր՝ Յուդային ձայնը
լսէ , ու զանիկայ իր ժողովուրդին
տար . անոր ձեռքերը իրեն բաւա-
կան ըլլան , և անոր թշնամեացը
դէմ օգնական եղիր ։
8 Ու Ղեւիին համար ըսաւ . Քու
Թումիմդ ու Ուրիմդ քու սուրբ
մարդուդ ըլլայ , որ զանիկայ
Մասսայի մէջ փորձեցիր , ու Մե-
րիպայի ջուրին վրայ անոր հետ
վիճեցար ։
9 Ան որ իր հօրը ու մօրը համար՝
Զանիկայ չտեսայ՝ ըսաւ , և իր
եղբայրները չճանչցաւ , ու իր որ-
դիքը չգիտցաւ , քանզի անոնք
քու խօսքիդ զգուշութիւն ըրին ,
ու քու ուխտդ պահեցին ։
10 Քու դատաստաններդ Յակո-
բին , ու քու օրէնքդ Իսրայէլին
անոնք պիտի սորվեցնեն . քու
առջեւդ խունկ պիտի մատուցա-
նեն , ու քու սեղանիդ վրայ ող-
ջակեզ ։
11 Ո՛վ Տէր՝ անոր զօրութիւնը
օրհնէ . ու անոր ձեռքին գործքը
ընդունէ . անոր վրայ ելլողներուն՝
ու անոր թշնամիներուն մէջքը
կոտրէ , որ մէյմըն ալ չելլեն ։
12 Բենիամինին համար ըսաւ . Տէ-
րոջը սիրելին անոր քովը ապա-
հովութեամբ բնակի . Աստուած
միշտ զանիկայ պաշտպանէ , ու ա-
նոր ուսերուն մէջը բնակի ։
13 Ու Յովսեփին համար ըսաւ .
Անոր երկիրը Տէրոջմէն օրհնեալ
ըլլայ , երկինքին ընտիր պարգևնե-
րովը , ցօղովը , ու վարը պառ-
կող անդունդներովը ,
14 Եւ արեգակէն յառաջ եկած ըն-
տիր բերքերովը , ու ամիսներուն
ընտիր արդիւնքներովը ,
15 Եւ հին լեռներուն ‡ընտիր
պտուղներովը" , ու մշտնջենաւոր
բլուրներուն ընտիր պարգևներովը ,
16 Եւ երկրիս ու անոր առատու-
թեանը ընտիր պարգևներովը , ու
մորենիին մէջը բնակողին բարե-
հաճութեամբը . ասոնք Յովսեփին
գլխուն վրայ , իր եղբարցը մէջ ե-
րևելի եղողին գագաթին վրայ թող
գան ։
17 Անիկայ իր ցուլին առջինեկին
պէս գեղեցկութիւն ունի . ու իր
եղջիւրները միեղջերուի եղջիւրնե-
րուն կը նմանին . անոնցմով պիտի
զարնէ ժողովուրդները մինչև երկ-
րիս ծայրերը . ասոնք են Եփրե-
մին բիւրաւորները , ու Մանասէին
հազարաւորները ։
18 Եւ Զաբուղոնին համար ըսաւ .
Ուրախացիր ով Զաբուղոն՝ քու
ելած ատենդ , ու դուն ով Իսաքար՝
քու վրաններուդ մէջը ։
19 Ժողովուրդները լեռը հրաւիրե-
լով՝ հոն արդարութեան զոհեր
պիտի մատուցանեն . քանզի անոնք
ծովերուն առատութիւնը ու ա-
ւազին ծածուկ գանձերը պիտի
ծծեն ։
20 Ու Գադին համար ըսաւ . Գա-
դը ընդարձակողը օրհնեալ ըլլայ .
մատակ առիւծի պէս կը նստի , ու
թևեր և գլուխներ կը փառատէ .
21 Եւ անիկայ իրեն առաջին մասը
իրեն յարմար տեսաւ . քանզի հոն՝
օրէնսդիրին պատուած բաժինին մէ-
ջը պահուեցաւ , և ժողովուրդին
գլխաւորներովը գալով՝ Տէրոջը
արդարութիւնը ու անոր դատաս-
տանները Իսրայէլի հետ ՚ի գործ
դրաւ ։
22 Ու Դանին համար ըսաւ . Դանը
առիւծի ձագ է . անիկայ Բասա-
նէն պիտի ցատկէ ։
23 Ու Նեփթաղիմին համար ըսաւ .
Նեփթաղիմը Աստուծոյ շնորհ-

Ն.Ք.Գ. 1451
Տես Ղև. ժ. 3. * Եբր. չսրբեցիք. † Թուոց. իէ. 12. Գլ. լբ. 4. ‡ Եբր. դիմացն

Ծն. խթ. 28. Սաղ. ղ. ին վերնագիրը.
1491
Ել. ժթ. 18. 20. Դատ. ե. 4, 5. Ամբ. գ. 3. Տես Սաղ. կը. 17. Դան. է. 10. Գործ. է. 53. Գաղ. գ. 19. Եբր. բ. 2. Յայտ. ե. 11. թ. 16. Ել. ժթ. 5. Գլ. է. 7, 8. Սաղ. խէ. 4. Ովս. ժա. 1. Մաղ. ա. 2. Գլ. է. 6. Ծն. խթ. 9. Սաղ. ծ. 5. Առակ. բ. 1. Ծն. խթ. 39. Գործ. իր. 3. Ել. ժէ. 17. Ել. է. 19. Սաղ. ճժթ. 111. Եբր. Յեսուին մէջ թաղուոր. Գլ. լբ. 15. Տես Ծն. լգ. 31. Դատ. թ. 2. ժէ. 6. Ծն. խթ. 8. Սաղ. ճխգ. 5. Ել. իբ. 30. Ել. ժէ. 7. Թուոց. ի. 13. Գլ. բ. 2, 3, 16. Սաղ. ձա. 7.

Ն.Ք.Գ. 1451
Յ Թագ. իդ. 23. Սաղ. ի. 3. Եզեկ. ի. 40, 41. խգ. 27.
Կամ՝ ուսերուն
Ծն. խթ. 25. Ծն. իէ. 28. Եբր. լեռներուն. Ծն. խթ. 26. Եբր. գլուխը. Ամբ. գ. 6. Ել. գ. 2. 4. Գործ. է. 30. 35. Ծն. խթ. 26. Սաղ. ե. 1. Թուոց. իգ. 22. Սաղ. ղբ. 10. Գ Թագ. իբ. 11. Սաղ. խդ. 5. Ծն. խը. 19. Ծն. խթ. 13, 14, 15. Եսա. բ. 3. Սաղ. դ. 5. Տես Ցես. ժգ. 10, ևն. Սաղ. ժբ. 8, ևն. Թուոց. լբ. 16, 17, ևն. Յես. դ. 12. Յեսու. ժթ. 47. Դատ. ժը. 27. Ծն. խթ. 21.

Ել. լբ. 26, 27, 28. Տես Երեմ. ժբ. 18. Մաղ. բ. 5, 6. Ղև. ժ. 11. Գլ. ժէ. 9, 10, 11. Եզ. Ց. Եզեկ. խդ. 23, 24. Մաղ. բ. 7. Ղև. լ. 7, 8. Թուոց. ժզ. 40. Սաղմ. բ. 28. Ղև. ա. 9, 13, 17. Սաղ. ծա. 19. Եզեկ. խգ. 27.

Ն. Ք. ԴՔ.
1451

քովը կշտացած , և Տէրոջը օրհնու-
թիւնովը լցուած , Բ արևմուտքը ու
հարաւը պիտի ժառանգէ ։
24 Ու Ասերին համար ըսաւ . Գ Ա-
սերը որդւոցմէ օրհնուի . իր եղ-
բայրներուն հաճոյ ըլլայ , ու Դ ոտքը
եղի մէջ թաթխէ ։
25 Քու *կօշիկներդ Ե երկաթէ ու
պղնձէ ըլլան , և քու ուժդ քու
օրերուդ չափ ըլլայ ։
26 Զ † Իսրայէլի Է Աստուծոյն պէս
չկայ . Ը անիկայ քեզի օգնութիւն
ընելու համար , իր մեծ վայելչու-
թեամբը երկինքներու ու ամպերու
վրայ կը նստի ։
27 Թ Յաւիտենական Աստուածը քեզի
ապաւէն է , ու անոր յաւիտենա-
կան բազուկները ‡ քեզի պաշտպան
են" . քանզի Ժ թշնամիները քու
առջևէդ պիտի վռնտէ , ու Զա-
նոնք կոտրէ , պիտի ըսէ ։
28 ԺԱ Եւ Իսրայէլը ապահովութեամբ
առանձին պիտի բնակի . ԺԲ Յակոբին
աղբիւրը ցորենի ու գինիի երկրին
մէջ պիտի ըլլայ , ու ԺԳ անոր երկին-
քէն ցօղ պիտի կաթի ։
29 ԺԴ Երանի քեզ՝ ով Իսրայէլ .
ԺԵ ո՞վ ժողովուրդը քեզի պէս Տէ-
րոջը ձեռքովը փրկուած է ԺԶ Նա է
քու օգնութեանդ ասպարը՝ ու
յաղթութեանդ սուրը անիկայ է .
ԺԷ Քու թշնամիներդ քեզի պիտի
‖ խոնարհին , ու ԺԸ անոնց բարձր
տեղուանքը պիտի կոխես ։

Բ Տե՛ս Յես. ժթ. 32 ։
Գ Տե՛ս Ծն. խթ. 20 ։
Դ Տե՛ս Յոբ. իթ. 6 ։
* Կամ՝ կղպակներդ
Ե Գլ. ը. 9 ։
Զ Գլ. լբ. 15 ։
† Եբր. Յեսուրունի
Է Ել. ժե. 11 ։ Սաղ. հզ. Տ ։ Երեմ. ժ. 6 ։
Ը Սաղ. կը. 4, 33, 34 ։ Ճգ. 3 ։ Ամբ. գ. 8 ։
Թ Սաղ. ղ. 1 ։
‡ Եբր. տակն են.
Ժ Գլ. թ. 3, 4, 5 ։
ԺԱ Թուոց. իգ. 9 ։ Երեմ. իգ. 6 ։ լգ. 16 ։
ԺԲ Գլ. ը. 7. 8 ։
ԺԳ Ծն. իէ. 28 ։ Գլ. ժա. 11 ։
ԺԴ Սաղ. ճխդ. 15 ։
ԺԵ Բ Թագ. է. 23 ։
ԺԶ Սաղ. ճժե. 9, 10, 11 ։
ԺԷ Բ Թագ. իբ. 45 ։ Սաղ. ժը. 44 ։ կզ. 3 ։ ձա. 15 ։
‖ Կամ՝ ստեն ։
ԺԸ Գլ. լբ. 13 ։

## ԳԼ. ԼԴ

1 Մովսէս Նաբաւ լեռնէն երկիրը կը դիտէ , 5 ու հոն կը վախճանի ։ 6 Անոր թաղումը , 7 ու կենացը օրերը ։ 8 Ժողովուրդը երեսուն օր սուգ կը պահէ անոր համար ։ 9 Յեսուն անոր տեղը կը յաջորդէ ։ 10 Մովսէսին գովութիւնը ։

1 Ու Մովսէս Մովաբի դաշտերէն՝
Ա Նաբաւ լեռանը վրայ Երիքովին
դիմացի Փասգային գագաթը ե-
լաւ . և Տէրը Բ անոր ցուցուց բո-
լոր Գաղաադու երկիրը Գ մինչև
2 Դանը , Նաև բոլոր Նեփթաղիմը ,
ու Եփրեմի և Մանասէի երկիրը ,
ու Յուդայի բոլոր երկիրը Դ մինչև
3 արևմտեան ծովը , Եւ հարաւային
կողմը , ու Երիքովի հովիտին դաշ-
տը , Ե Արմաւենեաց քաղաքը
4 մինչև Սեգովրը ։ Եւ Տէրը անոր
ըսաւ . Զ Աս է ան երկիրը՝ որուն
համար Աբրահամին , Իսահակին ու
Յակոբին երդում ըրի՝ ըսելով .
Քու սերունդիդ պիտի տամ անի-
կայ . Է Ահա քու աչքերուդ ցու-
ցուցի . բայց դուն հոն պիտի չանց-
նիս ։
5 Ը Ուստի Տէրոջը ծառան Մովսէս՝
հոն Մովաբի երկրին մէջ Տէրոջը
6 ըսածին պէս՝ մեռաւ . Եւ զանիկայ
Բեթփեգովրին դիմացը՝ Մովաբին
երկիրը՝ ձորի մը մէջ թաղեց . ու
Թ մինչև աս օրս անոր գերեզմանը
7 մարդ մը չգիտցաւ ։ Ժ Եւ Մովսէս
իր մեռած ատենը հարիւր քսան
տարեկան էր . ԺԱ անոր աչքերը չը-
տկարացան , ու անոր ուժը չգը-
8 նաց ։ Եւ Իսրայէլի որդիքը Մո-
վաբի դաշտերուն մէջ՝ Մովսէսին
համար ԺԲ երեսուն օր լացին . ու
Մովսէսին համար սուգի լացին օ-
րերը լմնցան ։
9 Եւ Նաւէի որդին Յեսուն ԺԳ իմաս-
տութեան հոգիով լցուեցաւ , ո-
րովհետև ԺԴ Մովսէս իր ձեռքերը ա-
նոր վրայ դրեր էր . ու Իսրայէլի
որդիքը անոր հնազանդութիւն ը-
րին , և Տէրը ինչ որ Մովսէսին
պատուիրեր էր , անանկ ըրին ։
10 Եւ անկէ ետև ԺԵ Տէրոջը երես առ
երես ճանչցած Մովսէսին պէս՝ ԺԶ Իս-
11 րայէլի մէջ մարգարէ մը չելաւ , Ա-
ԺԷ նոր բոլոր նշաններով ու հրաշքներով ,
որ Տէրը խրկեց զանիկայ Եգիպտո-
սի երկրին մէջ ընելու Փարաւոնին՝
ու անոր ամէն ծառաներուն՝ և ա-
12 նոր բոլոր երկրին , Ու ան բոլոր զօ-
րաւոր ձեռքով և բոլոր մեծ սոս-
կումով՝ որ Մովսէս ըրաւ բոլոր Իս-
րայէլին աչքին առջև ։

Ա Թուոց. իէ. 12 ։ լգ. 47 ։ Գլ. լբ. 49 ։
Բ Գլ. գ. 27 ։
Գ Ծն. ժդ. 14 ։

Ն. Ք. ԴՔ.
1451

Դ Գլ. ժա. 24 ։
Ե Դատ. ա. 16 ։ գ. 13 ։ Բ Մն. իը. 15 ։
Զ Ծն. ժբ. 7 ։ ժգ. 15 ։ ժե. 18 ։ իզ. 3 ։ իը. 13 ։
Է Գլ. գ. 27 ։ լբ. 52 ։
Ը Գլ. լբ. 50 ։ Յես. ա. 1, 2 ։
Թ Յուդ. 9 ։
Ժ Գլ. լա. 2 ։
ԺԱ Տե՛ս Ծն. իէ. 1 ։ խը. 10 ։ Յես. ժդ. 10. 11.
1451
ԺԲ Տե՛ս Ծն. ծ. 3, 10 ։ Թուոց. ի. 29 ։
ԺԳ Ես. ժա. 2 ։ Դան. զ. 3 ։
ԺԴ Թուոց. իէ. 18, 23 ։
ԺԵ Ել. լգ. 11 ։ Թուոց. ժբ. 6, 8 ։ Գլ. ե. 4 ։
ԺԶ Տե՛ս Գլ. ժը. 15, 18 ։
ԺԷ Գլ. դ. 34 ։ է. 19 ։

# ԳԻՐՔ ՅԵՍՈՒԱՅ

Ն․ Ք․ Ծ․ 1451

## ԳԼՈՒԽ Ա

1 Տէրը Մովսէսին յաջորդ կը կարգէ Յեսուն ։ 3 Խոստացուած երկրին սահմանները ։ 5 Աստուած կը խոստանայ Յեսուին օգնելու ․ 9 ու անոր պատուէր կու տայ ։ 10 Յեսու կարգի կը դնէ ժողովուրդը Յորդանանէն անցնելու համար ։ 12 կը յիշեցրնէ երկուք ու կէս ցեղերուն՝ ինչ որ Մովսէսին խոստացեր էին ։ 16 Անոնք ալ իրեն հնազանդութիւն կը խոստանան ։

1 Տէրոջը ծառային Մովսէսին մեռնելէն ետքը Տէրը Մովսէսին
ᵃսպասաւորին Նաւէի որդւոյն Յե-
2 սուին հետ խօսեցաւ ըսելով․ ᵇԻմ ծառաս Մովսէսը մեռաւ․ հիմա ել
ᶜᶜ անցիր ատ Յորդանանէն դուն և աս բոլոր ժողովուրդը՝ այն երկիրը
որն որ ես Իսրայէլի որդւոցը կու
3 տամ ։ ᵈՁեր ոտքին բոլոր կոխած տեղերը ձեզի պիտի տամ, ինչպէս որ
4 Մովսէսին ըսի ․ ᵉԱնապատէն ու աս Լիբանանէն մինչև մեծ գետը
ᶠᶠ Եփրատ գետը, Քետացւոց բոլոր երկիրը՝ մինչև մեծ ծովը արև-
մտեան կողմը՝ ձեր սահմանը ըլլայ ։
5 ᵍՔու կենացդ բոլոր օրերուն մէջ՝ մարդ մը չկարենայ քեզի դէմ դը-
նել ․ ʰԻնչպէս որ Մովսէսին հետ էի ⁱքեզի հետ ալ անանկ պիտի ըլ-
լամ ․ ʲՔեզ պիտի չթողում, ու
6 քեզ անտես պիտի չընեմ ․ ᵏԶօ-րացիր ու քաջասիրտ եղիր ․ քան-
զի աս ժողովուրդին դուն պիտի ժառանգեցրնես այն երկիրը որուն
համար անոնց հայրերուն երդում
7 ըրի անոնց տալու ։ Միայն թէ զօրացիր ու խիստ քաջ եղիր ․ ˡոր
իմ ծառայիս Մովսէսին բոլոր քեզի պատուիրած օրէնքը պահես ու ը-
նես ․ ᵐանկէ աջ կամ ձախ կողմը չխոտորիս ․ որ քու ամէն երթալու
տեղդ ⁿյաջողութիւն գտնես" ։
8 ᵒԱս օրինաց գիրքը քու բերնէդ չզատուի ․ հապա ᵖգիշեր ցորեկ ա-
նոր վրայ մտածես, որ բոլոր անոր մէջի գրուածները պահես ու կա-
տարես ․ քանզի այն ատենը քու գործքերդ յառաջ կը տանիս, և այն
ատենը ᵠյաջողութիւն կը գտնես ։
9 ʳԱհա՛ քեզի կը պատուիրեմ, զօ-րացիր ու քաջասիրտ եղիր ․ ˢմի
վախնար ու մի զարհուրիր ․ քանզի քու ամէն երթալու տեղերդ՝ քու
Տէր Աստուածդ քու հետդ է ։
10 Անկէ ետքը Յեսու՝ ժողովուրդին
ոստիկաններուն պատուիրելով՝ ը-
11 սաւ ․ Բանակին մէջէն անցէք ․ ու ժողովուրդին ապսպրելով ըսէք ․
Ձեզի պաշար պատրաստեցէք ․ քանզի ᵗիրեք օրէն ետև դուք աս
Յորդանանէն պիտի անցնիք , որ երթաք ժառանգէք այն երկիրը ․
որն որ ձեր Տէր Աստուածը ձեզի ժառանգութիւն կու տայ ։
12 Եւ Ռուբէնեանց ու Գադեանց և Մանասէի կէս ցեղին՝ Յեսու խօ-
13 սեցաւ ու ըսաւ ․ ᵘՄիտքերնիդ բե-րէք այն խօսքը որ Տէրոջը ծառան
Մովսէս ձեզի պատուիրեց՝ ըսելով ․ Ձեր Տէր Աստուածը ձեզ հանգըս-
տացուց , ու աս երկիրը ձեզի
14 տուաւ ։ Ձեր կնիկները՝ ձեր տը-ղաքները և ձեր անասունները թող
բնակին այն երկրին մէջը ․ որ Մով-սէս ձեզի տուաւ Յորդանանու ան-
դին կողմը ․ բայց դուք ամէնքդ որ ուժով կտրիճներ էք ᵛսպառազի-
նեալ ձեր եղբայրներուն առջևը անցնելով անոնց օգնութիւն ը-
15 նէք ․ Մինչև որ Տէրը ձեր եղբայր-ներն ալ ձեզի պէս հանգստացրնէ ,
և անոնք ալ ժառանգեն այն երկի-րը ․ որն որ ձեր Տէր Աստուածը ա-
նոնց կու տայ ʷու ետքը ձեր ժա-ռանգութեան երկիրը դառնաք ,
և ժառանգէք զանիկայ ․ որն որ Տէրոջը ծառան Մովսէս ձեզի տուաւ
Յորդանանու ասդիի կողմը դէպ ՚ի արևելք ։
16 Եւ անոնք Յեսուին պատասխան տուին՝ ու ըսին ․ Քու ամէն պա-
տուիրածներդ պիտի ընենք ․ և ուր որ մեզ խրկես , պիտի երթանք ։
17 Ինչպէս որ Մովսէսին հնազանդու-թիւն կ՚ընէինք , անանկ ալ քեզի
հնազանդութիւն պիտի ընենք ․ միայն թէ քու Տէր Աստուածդ ˣքու
հետդ ըլլայ ․ ինչպէս որ Մովսէսին
18 հետն էր ։ Ամէն մարդ՝ որ քու հրամանիդ դէմ դնէ , և ամէն ինչ
որ անոր պատուիրես , քու խօսքերդ միտք չընէ ․ պիտի մեռցուի ․ միայն
թէ զօրացիր ու քաջասիրտ եղիր ։

## ԳԼ․ Բ

1 Ռախաբ՝ Սատիմէն խրկուած երկու լրտեսները կ՚ընդունի ու կը պահէ ․ 9 և դաշինք կ՚ընէ անոնց հետ ։ 23 Լրտեսները կը դառնան ու լուր կը տանին ։

ᵃ Ել․ ԺԴ․ 13 ։ Բ Օր․ Ա․ 38 ։
ᵇ Բ Օր․ ԼԴ․ 5 ։
ᵈ Բ Օր․ ԺԱ․ 24 ։ Գլ․ ԺԴ․ 9 ։
ᵉ Ծն․ ԺԵ․ 18 ։ Ել․ ԻԳ․ 31 ։ Թուոց ԼԴ․ 3–12 ։
ᵍ Բ Օր․ Է 24 ։
ʰ Ել․ Գ․ 12 ։ Բ Օր ԼԱ․ 8․ 23 ։ Հմր 9․ 17 ։ Գլ Գ․ 7 ։ Գ 27 ։ Ես․ ԽԳ 2․ 5 ։
ʲ Բ Օր ԼԱ․ 6․ 8 ։ Եբր ԺԳ․ 5 ։
ᵏ Բ Օր․ ԼԱ․ 7․ 23 ։
ˡ Թուոց․ ԻԷ․ 23 ։ Բ Օր ԼԱ․ 7 ։ Գլ․ ԺԱ․ 15 ։
ᵐ Բ Օր․ Ե․ 32 ։ ԻԸ․ 14 ։
ⁿ Կամ՝ խելացութեամբ վարուիս ։ Բ Օր․ ԻԹ 9 ։
ᵒ Բ Օր․ ԺԷ․ 18 ։ 19 ։
ᵖ Սաղ․ Ա․ 2 ։
ᵠ Հմր 7 ։
ʳ Բ Օր․ ԼԱ․ 7․ 8․ 23 ։
ˢ Սաղ․ ԻԷ․ 1 ։ Երեմ․ Ա 8 ։
ᵗ Գլ․ Գ․ 2 ։ Տես Բ Օր․ Թ․ 1 ։ ԺԱ․ 31 ։
ᵘ Թուոց ԼԲ․ 20–28 ։ Գլ ԻԲ․ 2 3 ։ 4 ։
ᵛ Կամ՝ գունդ գունդ ․ Ել ԺԳ․ 18 ։
ʷ Գլ․ ԻԲ․ 4 ։
ˣ Հմր 5 ։ Ա Թագ Ի․ 13 ։ Գ Թագ․ Ա 37 ։

Ն. Ք. Ք. 1451

1 Ու Նաւէի որդին Յեսու՝ ա Սա-
տիմէն՝ երկու մարդ խրկեց՝
ծածկաբար երկիրը լրտեսելու հա-
մար, ու անոնց ըսաւ. Գացէ՛ք՝ այն
երկիրը ու Երիքովը տեսէք. և ա-
նոնք գացին, ու բ Ռախաբ անու-
նով գ պոռնիկ կնկան մը տունը
2 մտան, և հոն * մնացին։ Այն ատենը
դ Երիքովի թագաւորին լուր տրուե-
ցաւ՝ ըսելով. Ահա՛ աս գիշեր եր-
կիրը լրտեսելու համար՝ Իսրայէլի
որդւոցմէ մարդիկներ եկեր են հոս։
3 Ու Երիքովի թագաւորը Ռախաբին
մարդ խրկեց՝ ըսելով. Քեզի եկող
ու տունդ մտնող մարդիկները
դուրս հանէ. քանզի անոնք այս
բոլոր երկիրը լրտեսելու եկեր են։
4 ե Եւ կնիկը այն երկու մարդը առաւ
պահեց, ու ըսաւ. Իրաւ այն մար-
դիկները ինծի եկան. բայց ուսկից
5 ըլլալնին չգիտցայ. Ու դռներուն
գոցուելու ատենը մութին՝ այն
մարդիկները դուրս ելան. և այն
մարդիկներուն ուր երթալը չեմ
գիտեր. շուտով անոնց ետևէն
6 ինկէք. որ անոնց հասնիք։ Իսկ
զ ինքը տանիքը հանելով զանոնք
պահեր էր քթանի եղէգներուն
մէջը՝ որ տանիքին վրայ դիզուած
7 ունէր։ Ուստի մարդիկը Յորդա-
նանու ճամբով մինչև անցքերը ա-
նոնց ետևէն ինկան. և անոնց
ետևէն ինկողները՝ դուրս ելլելէն
ետքը դուռը գոցեցին։
8 Ու երբոր անոնք դեռ չէին քնա-
ցած, կնիկը տանիքին վրայ անոնց
9 քովը ելաւ. Եւ մարդիկներուն ը-
սաւ. Ես գիտեմ որ Տէրը այս եր-
կիրը ձեզի տուաւ. ու է ձեր վախը
մեր վրայ ինկաւ. և ձեր պատճա-
ռաւը այս երկրիս բոլոր բնակիչները
10 ը հալեցան. Քանզի մենք լսեցինք
թէ ինչպէս Տէրը՝ ձեր Եգիպտոսէն
ելած ատենը՝ թ Կարմիր ծովուն ջու-
րերը ձեր առջևէն ցամքեցուց. Նաև
ժ ինչ որ դուք ըրիք Յորդանանու
անդիի կողմը բնակող Ամորհացւոց
երկու թագաւորներուն Սեհոնին
ու Ովգին՝ որոնք բնաջինջ ըրիք։
11 Ուստի ի այս բաները լսածնուս պէս՝
լ սիրտերնիս հալեցաւ, ու ձեր երե-
սէն վախնալնուս համար՝ մէկու մը
վրայ † համարձակութիւն չմնաց.
քանզի խ ձեր Եհովայ Աստուածը՝
վերը երկինքին մէջ ու վարը երկ-
րիս վրայ Աստուած անիկայ է։
12 Հիմա կ'աղաչեմ, ծ Տէրոջմով եր-
դում ըրէք ինծի, որ ես ձեզի ո-
ղորմութիւն ընելուս համար, դուք
ալ կ իմ հօրս տանը ողորմու-
թիւն ընէք. և հ ինծի ճշմարիտ
13 նշան մը տուէք, Որ իմ հայրս՝
մայրս՝ եղբայրներս՝ քոյրերս ու

ա Թու. իե. 1։
բ Մատ. ա. 5։
գ Եբր. ժա. 31; Յակ. բ. 25։
* Եբր. պառկեցան։
դ Սաղ. ծբէ. 1; Առակ. իա. 30։
ե Տես բ Թագ. ժէ. 19, 20։
զ Տես Ել. ա. 17; բ Թագ. ժթ. 19։
է Ծն. լե. 5; Ել. իգ. 27; բ Օր. բ. 25; ժա. 25։
ը Ել. ժե. 15։
թ Ել. ժդ. 21; Գէ. դ. 23։
ժ Թու. իա. 24, 34, 35։
ի Ել. ժե. 14, 15։
լ Գէ. ե. 1; է. 5; Ես. ժգ. 7։
† Եբր. հոգի։
խ բ Օր. դ. 39։
ծ Տես ա Թագ. ի. 14, 15, 17։
կ Տես ա Տիմ. ե. 8։
հ Հմր 18։

բոլոր անոնց վերաբերեալները ողջ
պիտի թողուք, և մեր անձը մա-
14 հուանէ պիտի ազատէք։ Ու այն
մարդիկը անոր ըսին. Թէ որ աս
մեր բանը չյայտնէք, ձեր տեղը մեր
անձերնիս մեռնին. ու երբոր Տէրը
այս երկիրը մեզի տայ ձ քեզի ողոր-
մութիւն ու հաւատարմութիւն
15 պիտի ընենք։ Ետքը ղ զանոնք մէկ
չուանով մը պատուհանէն վար
իջեցուց. (քանզի իր տունը բեր-
դին պարսպին վրայ էր, ու ինքը
16 պարսպին վրայ կը բնակէր։) Եւ
անոնց ըսաւ. Լեռը գացէք. չըլլայ
որ հալածողները ձեզի հանդիպին,
ու հոն երեք օր պահուեցէք,
մինչև որ հալածողները ետ դառ-
նան, անկէ ետև ձեր ճամբան գա-
17 ցէք։ Եւ այն մարդիկը անոր ըսին.
Ահա մենք աս ճ մեզի ընել տուած
երդումէդ այս կերպով անպարտ
18 կ'ըլլանք. մ Երբոր մենք այս երկի-
րը մտնենք, աս կարմիր դերձանէ
չուանը այն պատուհանին վրայ կա-
պես. ուսկից որ մեզ իջեցուցիր.
յ և քու հայրդ՝ մայրդ՝ եղբայրներդ՝
ու քու հօրդ բոլոր տունը՝ քու
19 քովդ աս տանը մէջ ժողվես. Ու
անանկ որ ով որ քու տանդ դռնէն
դուրս ելլէ, անոր արիւնը իր գլ-
խուն վրայ ըլլայ. մենք անպարտ
ենք. բայց քու քովդ այս տանը մէջ
բոլոր եղողներուն թէ որ ձեռք մը
դպչի, ն անոնց արիւնը մեր գլխուն
20 վրայ ըլլայ։ Եւ թէ որ աս մեր բա-
նը ուրիշի մը յայտնես, այն ատենը
քու մեզի ընել տուած երդումէդ
21 անպարտ կ'ըլլանք։ Ու ինքը ըսաւ.
Ձեր խօսքերուն պէս՝ անանկ թող
ըլլայ. և թողուց զանոնք, ու ա-
նոնք գացին. և այն կարմիր չուանը
պատուհանին վրայ կապեց։
22 Եւ անոնք անկէ լեռնակողմը գա-
ցին, ու հոն երեք օր նստան, մին-
չև որ հալածողները ետ դարձան.
ու հալածողները զանոնք ամէն
ճամբու մէջ փնտռեցին, բայց
23 չգտան։ Այն ատենը այն երկու մար-
դիկը ետ դառնալով՝ լեռնէն վար
իջան, և անցնելով՝ Նաւէի որդւոյն
Յեսուին գացին, ու իրենց պատա-
հած բոլոր բաները անոր պատմե-
24 ցին. Եւ Յեսուին ըսին. Իրաւցը-
նէ շ Տէրը այն բոլոր երկիրը մեր
ձեռքը տուաւ. ու այն երկրին բո-
լոր բնակիչները մեր երեսէն ո հալե-
ցան։

Ն. Ք. Ք. 1451

ձ Դատ. ա. 24; Մատ. ե. 7։
ղ Գոր. թ. 25։
ճ Եբ. ի. 7։
մ Հմր 12։
յ Գէ. զ. 23։
ն Մատ. իէ. 25։
շ Ել. իգ. 31; Գէ. զ. 2; իա. 44։
ո Հմր 9։

## ԳԼ. Գ

1 Յեսու Յորդանան կու գայ։ 2 Ոստիկանները կ'իմացրնեն ժողովուրդին թէ ինչ կարգով պիտի անցնին։ 7 Տէրը կը քաջալերէ Յեսուն. 9 ան ալ կը քաջալերէ ժողովուրդը։ 14 Յորդանանու ջուրերը կը բաժնուին։

Ն. Ք. ԶՔ.
1451

1 Ու Յեսու առտուանց կանուխ ե-
լաւ. և ինք ու բոլոր Իսրայէլի
որդիքը [ա]Սատիմէն չուեցին, ու
մինչև Յորդանան եկան. և անցնե-
2 լէն առաջ հոն իջևան ըրին։ Ու
[բ]իրեք օրէն ետքը՝ ոստիկանները
3 բանակին մէջէն անցան. Եւ ժողո-
վուրդին պատուիրելով՝ ըսին.
[գ]Երբոր ձեր Տէր Աստուծոյն ուխ-
տին տապանակը տեսնէք, [դ]ու
Ղևտացի քահանաները՝ որ զանիկայ
կը տանին, դուք ալ ձեր տեղերէն
ելէք. ու անոր ետևէն գացէք.
4 [ե]Բայց ձեր ու անոր մէջտեղը՝ երկու
հազար կանգունի չափ միջոց պիտի
ըլլայ. անոր չմօտենաք, որ երթա-
լու ճամբանիդ գիտնաք. քանզի
ասկէ առաջ աս ճամբայէն անցած
5 չէք։ Եւ Յեսու ժողովուրդին ը-
սաւ. [զ]Սրբեցէ՛ք ձեր անձերը. քան-
զի Տէրը վաղը ձեր մէջը հրաշքներ
6 պիտի ընէ։ Անկէ ետև Յեսու քա-
հանաներուն խօսեցաւ՝ ըսելով.
[է]Ուխտին տապանակը վերցուցէք,
ու ժողովուրդին առջե՛ւը անցէք։
Ուստի անոնք ուխտին տապանակը
վերցուցին, ու ժողովուրդին առ-
ջևէն գացին։
7 Եւ Տէրը ըսաւ Յեսուին. Այսօր
պիտի սկսիմ [ը]բոլոր Իսրայէլին աչ-
քին առջևը քեզ մեծցնելու, որ
գիտնան թէ [թ]ինչպէս որ Մովսէսին
հետ էի, քեզի հետ ալ այնպէս պի-
8 տի ըլլամ։ Հիմա դուն [ժ]ուխտին
տապանակը վերցընող քահանանե-
րուն պատուիրելով՝ ըսէ. Երբոր
Յորդանանու ջուրին եզերքը հաս-
նիք, [ի]Յորդանանու մէջը կայնե-
ցէ՛ք։
9 Ու Յեսու Իսրայէլի որդւոցը ը-
սաւ. Հո՛ս մօտեցէ՛ք, և ձեր Տէր
Աստուծոյն խօսքերը մտիկ ըրէք։
10 Ու Յեսու ըսաւ. Ասով պիտի գիտ-
նաք, որ [լ]կենդանի Աստուածը ձեր
մէջն է, ու [խ]ձեր առջևէն՝ Քանա-
նացիները՝ Քետացիները՝ Խևացի-
ները՝ Փերեզացիները՝ Գերգեսա-
ցիները՝ Ամօրհացիները ու Յեբու-
սացիները բոլորովին պիտի վռըն-
11 տէ. Ահա [ծ]բոլոր երկրիս Տէրոջը
ուխտին տապանակը ձեր առջևը
պիտի անցնի Յորդանանու մէջ.
12 Եւ հիմա դուք [կ]Իսրայէլի ցեղերէն
տասուերկու մարդ առէք՝ ամէն
13 ցեղէն մէյմէկ մարդ. Ու երբոր
[հ]բոլոր երկրիս Եհովայ Տէրոջը
[ձ]տապանակը վերցընող քահանայից
ոտքերը Յորդանանու ջուրին մէջը
մտնեն, Յորդանանու ջուրը պիտի
կտրի, ու վերէն իջնող ջուրը
[ղ]կարկառակոյտի մը պէս պիտի
կայնի։
14 Ու երբոր ժողովուրդը՝ Յորդա-
նանէն անցնելու համար իրենց վը-
րաններէն չուեցին. [ճ]ուխտին տա-
պանակը վերցընող քահանաները
ժողովուրդին առջևէն կ'երթային.
15 Ու տապանակը վերցընողները մինչև
Յորդանան հասնելով՝ [մ]տապանակը
վերցընող քահանաներուն ոտքերը
ջուրին եզերքը մխուածին պէս՝
(ինչու որ [յ]հունձքի բոլոր ժամա-
նակը՝ [ն]Յորդանանու ջուրը առա-
տանալով՝ իր բոլոր եզերքները կը
16 կոխէ.) Ան ատենը վերէն իջնող
ջուրը կայնեցաւ, ու [շ]Սարթանին
քովը եղող Ադամ քաղաքէն շատ
հեռու կարկառակոյտի մը պէս
բարձրացաւ. ու [ո]դաշտի ծովը՝
այսինքն [չ]Աղի ծովը իջնողը լմնցաւ
կտրեցաւ. և ժողովուրդը Երիքովի
17 դիմացը անցաւ։ Ու Տէրոջը ուխ-
տին տապանակը վերցընող քահա-
նաները՝ Յորդանանու մէջը ցամա-
քի վրայ հաստատ կայնեցան. [պ]Ու
բոլոր Իսրայէլը ցամաքով անցաւ,
մինչև որ բոլոր ժողովուրդին Յոր-
դանանէն անցնիլը լմընցաւ։

[ա] Գլ. բ. 1։ [բ] Գլ. ա. 10, 11։ [գ] Տես Թւ. ժ. 33։ [դ] Բ Օր. լա. 9, 25։ [ե] Ել. ժթ. 12։ [զ] Ել. ժթ. 10, 14, 15։ Ղև. ի. 7։ Թւ. ժա. 18։ Գլ. է. 13։ Ա Թագ. ժզ. 5։ Յովէլ. բ. 16։ [է] Թւ. դ. 15։ [ը] Գլ. դ. 14։ Ա Մն. իթ. 25։ Բ Մն. ա. 1։ [թ] Գլ. ա. 5։ [ժ] Հմր 3։ [ի] Հմր 17։ [լ] Բ Օր. ե. 26։ Ա Թագ. ժէ. 26։ Դ Թագ. ժթ. 4։ Ովս. ա. 10։ Մատ. ժզ. 16։ Ա Թես. ա. 9։ [խ] Ել. լգ. 2։ Բ Օր. է. 1։ Սաղ. խդ. 2։ [ծ] Հմր 13։ Միք. դ. 13։ Զաք. դ. 14։ զ. 5։ [կ] Գլ. դ. 2։ [հ] Հմր 11։ [ձ] Հմր 15, 16։ [ղ] Սաղ. հը. 13։ ճժդ. 3։

[ճ] Գործ. է. 45։ [մ] Հմր 13։ [յ] Գլ. դ. 18։ ե. 10, 12։ [ն] Ա Մն. ժբ. 15։ Երեմ. ժբ. 5։ խթ. 19։ [շ] Գ Թագ. դ. 12։ է. 46։ [ո] Բ Օր. գ. 17։ [չ] Ծն. ժդ. 3։ Թւ. լդ. 3։ [պ] Տես Ել. ժդ. 29։

## ԳԼ. Դ

1 Տասուերկու մարդ կ'որոշուին՝ որ Յորդանա-
նէն յիշատակի համար տասուերկու քար առ-
նեն։ 9 Ուրիշ տասուերկու քար ալ Յորդա-
նանու մէջտեղը կը կանգնեն։ 10, 19 Ժողո-
վուրդը կ'անցնի։ 14 Աստուած Յեսուին պա-
տիւ կու տայ։ 20 Տասուերկու քարերը Գաղ-
գաղայի մէջ կը կանգնեն։

1 Ու երբոր բոլոր ժողովուրդին
[ա]Յորդանանէն անցնիլը լմըն-
ցաւ. Տէրը խօսեցաւ Յեսուին՝ ու
2 ըսաւ. [բ]Ժողովուրդէն տասուերկու
մարդ առէք. ամէն ցեղէն մէյմէկ
3 մարդ. Ու անոնց պատուիրելով՝
ըսէ՛ք. Ասկէ՝ Յորդանանու մէջէն՝
[գ]քահանայից ոտքերուն կոխած
տեղէն՝ ձեզի տասուերկու քար
վերցուցէք. և զանոնք ձեր հետը
տարէք, ու դրէ՛ք [դ]ան տեղը՝ ուր
որ աս գիշեր իջևան պիտի ընէք։
4 Եւ Յեսու Իսրայէլի որդւոցմէ իր
որոշած տասուերկու մարդիկը կան-
չեց, ամէն ցեղէն մէյմէկ մարդ.
5 Ու Յեսու անոնց ըսաւ. Յորդա-
նանու մէջը՝ ձեր Տէր Աստուծոյն
տապանակին առջե՛ւը անցէք, ու
Իսրայէլի որդւոց ցեղերուն թուո-
վը՝ ամէն մէկերնիդ ձեր ուսերուն
վրայ մէյմէկ քա՛ր վերցուցէք անկէ.
6 Որ ասիկայ ձեր մէջը նշան ըլլայ.
որ [ե]երբոր վաղը ձեր որդիքը ձեզի
հարցընելու ըլլան՝ ու ըսեն թէ՝ Աս
7 քարերը ի՞նչ պիտի ըլլան ձեզի. Ա-
նոնց ըսէ՛ք. Քանզի Տէրոջը ուխտի
տապանակին առջևէն՝ [զ]Յորդա-
նանու ջուրերը կտրուեցան. երբ-
որ անիկայ Յորդանանէն կ'անցնէր՝
Յորդանանու ջուրը կտրեցաւ. ու

[ա] Բ Օր. իէ. 2։ Գլ. գ. 17։ [բ] Գլ. գ. 12։ [գ] Գլ. գ. 13։ [դ] Հմր 19, 20։ [ե] Հմր 21։ Ել. ժբ. 26։ ժգ. 14։ Բ Օր. զ. 20։ Սաղ. խդ. 1։ հը. 3, 4, 5, 6։ [զ] Գլ. գ. 13, 16։

Ն. Ք. ԴՓ.
1451

ե Ել. ժբ. 14. Թու. ժզ. 40.

աս քարերը ե Իսրայէլի որդւոց մէջը
յիշատակի համար պիտի ըլլան յա-
8 ւիտեան ։ Եւ Իսրայէլի որդիքը Յե-
սուին պատուիրածին պէս ըրին .
ու Յորդանանու մէջէն տասներ-
կու քար առին՝ Իսրայէլի որդւոցը
ցեղերուն թուովը . ինչպէս որ Տէ-
րը Յեսուին հրամայեր էր , և զա-
նոնք իրենց հետը իջևանի տեղը
9 տարին , ու հոն դրին ։ Եւ Յեսու ա-
ռէկ տասներկու քարեր ալ կանգ-
նեց Յորդանանու մէջը , ուխտին
տապանակը վերցընող քահանայից
ոտքերուն կեցած տեղը . ու մինչև
10 աս օրս հոն են ։ Եւ տապանակը
վերցընող քահանաները Յորդանա-
նու մէջը կայնեցան , մինչև որ Յե-
սուա լմընցուց ան բոլոր խօսքը , որն
որ Տէրը Յեսուին պատուիրեց՝ ժո-
ղովուրդին ըսելու , ինչպէս որ
Մովսէս Յեսուին պատուիրեր էր .
և ժողովուրդը արտորալով անցաւ ։
11 Ու երբոր բոլոր ժողովուրդին անց-
նիլը լմընցաւ , ան ատենը Տէրոջը
տապանակը ու քահանաները ժո-
ղովուրդին առջևը անցան ։

ը Թու. լբ. 20. 27. 28.

12 Եւ ըՌուբէնի որդիքը ու Գադի
որդիքը և Մանասէի կէս ցեղը ըս-
պառազինեալ՝ Իսրայէլի որդւոցը
առջևը անցան , ինչպէս որ Մովսէս
13 անոնց ըսեր էր . Քառասուն հազարի
չափ պատրաստուած զօրք Տէրոջը
առջևը՝ պատերազմի համար Երի-
քովի դաշտը անցան ։

բ Գլ. գ. 7.

14 Նոյն օրը Տէրը՝ բոլոր բԻսրայէլին
աչքերուն առջևը Յեսուն մեծցուց .
ու անոր կենացը բոլոր օրերուն
մէջ՝ Մովսէսէն վախցածնուն պէս
15 անկէ կը վախնային ։ Եւ Տէրը

ժ Ել. իե 16. 22.

16 խօսեցաւ Յեսուին՝ ըսելով . ժՎը-
կայութեան տապանակը վերցընող
քահանաներուն հրաման ըրէ որ
17 Յորդանանէն ելլեն ։ Ուստի Յե-
սու՝ քահանաներուն հրամայեց , ու
18 ըսաւ . Յորդանանէն ելէք ։ Ու
երբոր Տէրոջը ուխտին տապանակը
վերցընող քահանաները Յորդա-
նանու մէջէն ելան , և քահանայից
ոտքերուն թաթերը ցամաքի վրայ
կոխեցին . Յորդանանու ջուրը իր
տեղը դարձաւ . ևու առջինին պէս
իր բոլոր եզերքներուն վրայ քա-
լեց ։

ե Գլ. գ. 15.

19 Եւ առաջին ամսուն տասներորդ
օրը՝ ժողովուրդը Յորդանանէն
դուրս ելլելով . ևԳաղգաղայի մէջ
Երիքովի արևելեան կողմը իջևան
20 ըրին ։ Եւ էան տասներկու քա-
րը՝ որ Յորդանանէն առեր էին .
Յեսու Գաղգաղայի մէջ կանգնեց .
21 Եւ Իսրայէլի որդւոցը խօսեցաւ՝
ըսելով . ժՎաղը՝ թէ որ ձեր որդի-
քը իրենց հայրերուն հարցընելու

ւ Գլ. ե. 9.

ե Հմր 3.

ժ Հմր 6.

ըլլան՝ ու ըսեն թէ՝ Աս քարերը
22 ի՞նչ են . Ձեր տղոցը իմացընէք՝
ըսելով . լԻսրայէլը աս Յորդանանէն
23 ցամաքով անցաւ . Որովհետև ձեր
Տէր Աստուածը ձեր առջևէն
Յորդանանու ջուրերը ցամքեցուց՝
մինչև որ դուք անցաք , ինչպէս որ
ձեր Տէր Աստուածը Կարմիր ծովուն
մէջն ալ ըրաւ , հորն որ ցամքեցուց
մեր առջևէն մինչև որ մենք ան-
24 ցանք . Որպէս զի Ներկրիս ամէն
ազգերը գիտնան՝ որ Տէրոջը ձեռքը
Ըզօրաւոր է , և դուք ճձեր Տէր
Աստուծմէն միշտ վախնաք ։

Ն. Ք. ԴՓ.
1451

լ Գլ. գ. 17. հ Ել. ժդ. 21. ն Բ Թագ. ը. 42. 43. դ Թագ. ժթ. 19. Սաղ. ճզ. 8. ղ Ել. ժե. 16. ա Մն. իթ. 12. Սաղ. ձթ. 13. ճ Ել. ժդ. 31. բ Օր. դ. 2. Սաղ. ձթ. 7. Եր. ժ. 7.

ԳԼ. Ե

1 Քանանացիք կը վախնան ։ 2 Յեսու կը նորոգէ թլփատութիւնը ։ 10 Գաղգաղայի մէջ զատիկը կ'ընեն ։ 12 Մանանան իջնելէն կը դադրի ։ 13 Հրեշտակ մը կ'երևնայ Յեսուին ։

1 Ու երբոր ալսեցին Ամօրհացւոց բո-
լոր թագաւորները . որոնք Յոր-
դանանու այդին արևմտեան կողմը
կը բնակէին , ու Քանանացւոց բոլոր
թագաւորները , բորոնք ծովեզեր-
քին քովը կը բնակէին . թէ Տէրը
Իսրայէլի որդւոցը առջևէն՝ մինչև
անոնց անցնիլը Յորդանանու ջու-
րերը ցամքեցուցեր է . անոնց սիրտը
հալեցաւ , գու Իսրայէլի որդւոցը
երեսէն՝ անոնց վրայ համարձակու-
թիւն չմնաց ։

ա Ել. ժե. 14. 15. Գլ. բ. 9. 10. 11. Սաղ. խբ. 6. Եզեկ. իա. 7. բ Թու. ժգ. 30.

գ Գ Թագ. ժ. 5.

2 Ան ատենը Տէրը Յեսուին ըսաւ .
Քեզի *սուր դանակներ շինէ . ու
դարձիր Իսրայէլի որդիքը նորէն
3 թլփատէ ։ Եւ Յեսու իրեն սուր
դանակներ շինեց , ու Բլուր ան-
թլփատից ըսուած տեղը Իսրայէլի
4 որդիքը թլփատեց ։ Եւ աս է
պատճառը . որուն համար Յեսու
զանոնք թլփատեց . ՏԵգիպտոսէն
ելած բոլոր ժողովուրդին արուները
ամէն պատերազմող մարդիկը Ե-
գիպտոսէն ելլելէն ետքը՝ անապա-
5 տին մէջ ճամբան մեռան . Ու բո-
լոր ելած ժողովուրդը թլփատուած
էր . բայց Եգիպտոսէն ելլելէն ետ-
քը՝ անապատին մէջ՝ ճամբան ծնած
բոլոր ժողովուրդը չթլփատեցին ։
6 Քանզի Իսրայէլի որդիքը եքառասուն
տարի անապատին մէջը պտըտե-
ցան , մինչև որ Տէրոջը խօսքին հնա-
զանդութիւն չընող բոլոր ազգը
այսինքն Եգիպտոսէն ելլող պատե-
րազմական մարդիկը սպառեցան .
որովհետև Տէրը անոնց երդում
ըրաւ որ Ղընաւ անոնց չցուցընէ
ան երկիրը եան կաթ ու մեղր
բղխող երկիրը , որն որ Տէրը ա-
նոնց հայրերուն երդում ըրեր էր
7 մեզի տալու ։ Ուստի ըանոնց տեղը
անոնց զաւակները հանեց , ու զա-
նոնք թլփատեց Յեսու . քանզի ան-
թլփատ էին . որովհետև ճամբուն

* Կամ՝ քարէ դանակներ . Տես Ել. դ. 25.

դ Թու. ժդ. 29. իզ. 64. 65. բ Օր. բ. 16.

ե Թու. ժդ. 33. բ Օր. ա. 3. բ. 7. 14. Սաղ. ղե. 10.

զ Թու. ժդ. 23. Սաղ. ղե. 11. Երր. գ. 11. ե Ել. գ. 8. ը Թու. ժդ. 31. բ Օր. ա. 39.

Ն․ ք․ զՓ․ 1451

8 մէջ թլփատած չէին ըլլալնուն ։ Ու
երբոր բոլոր ժողովուրդին թլփա-
տութիւնը լմընցաւ, բանակին մէջ ի-
րենց տեղը նստան, ՝մինչև որ ող-
9 ջացան ։ Ան ատենը Տէրը Յեսուին
ըսաւ. Այսօր ³Եգիպտոսի նախա-
տինքը ձեր վրայէն *վերցուցի ։
ուստի ան տեղին անունը մինչև աս
10 օրս ²† Գաղգաղա ըսուեցաւ ։ Եւ
Իսրայէլի որդիքը Գաղգաղայի մէջ
բանակեցան. ու նամուն չորեքտա-
սաներորդ օրը իրիկուան դէմ՝ Ե-
րիքովի դաշտերուն մէջը զատիկը
11 ըրին ։ Եւ զատկին հետևեալ օրը
ան երկրին պտուղէն բաղարջ կե-
րան, ու նոյն օրը բոհրած ցորեն
ալ կերան ։

12 Եւ հետևեալ օրը երբոր ան երկ-
րին պտուղէն կերան, ¹մանանան
դադարեցաւ. ու անկէ ետքը Իս-
րայէլի որդւոցը համար՝ ալ մանա-
նայ չէր գտնուեր. և ան տարին
Քանանու երկրին պտուղէն կերան ։

13 Ու երբոր Յեսու Երիքովի մօտ
էր, աչքերը վերցնելով տեսաւ որ՝
ահա ³իր դիմացը մէկ մարդ մը կայ-
ներ էր. և ⁴անոր ձեռքը մերկ սուր
մը կար. ու Յեսու անոր մօտենալով
անոր ըսաւ. Մեզմէ՞ ես, թէ մեր
14 թշնամիներէն ես ։ Եւ անիկայ ը-
սաւ. Ոչ, այլ ես ⁵Տէրոջը զօրա-
վարն եմ. ու հիմա եկայ ։ Եւ
Յեսու ³երեսի վրայ գետինը ինկաւ
ու երկրպագութիւն ըրաւ, և անոր
ըսաւ. Իմ տէրս իր ծառային ի՞նչ
15 կը հրամայէ ։ Ու Տէրոջը զօրա-
վարը Յեսուին ըսաւ. ¹Ոտքերէդ
կօշիկներդ հանէ. քանզի կայնած
տեղդ սուրբ է. և Յեսու այնպէս
ըրաւ ։

ԳԼ․ Զ

1 Երիքովը կը գոցուի ։ 2 Աստուած Յեսուին կ'իմացրնէ թէ ինչպէս պիտի պաշարէ զանիկայ ։ 12 Քաղաքին բոլորտիքէն կը դառնան ։ 17 Ան քաղաքը պիտի նզովուէր ։ 20 Պարիսպները վար կ'իյնան ։ 22 Ռախաբ կ'ազատուի ։ 26 Յեսու կ'անիծէ Երիքովը նորէն շինողը ։

1 Ու Երիքովը Իսրայէլի որդւոցը
‡պատճառաւը ամուր կերպով
մը փակուած էր. ելլող ու մտնող
2 չկար ։ Եւ Տէրը Յեսուին ըսաւ.
Նայէ՝ Երիքովը ու ⁼անոր թագա-
ւորը՝ ու զօրաւոր կտրիճները քու
3 ձեռքդ տուի ։ Ուստի ամէն պա-
տերազմական մարդիկները քաղա-
քին բոլորտիքը դառնալով՝ մէկ
անգամ քաղաքին բոլորտիքը պտը-
4 տիք. վեց օր ասանկ ընես ։ Եւ
տապանակին առջեւ՝ եօթը քահա-
նայ եօթը ‖Յոբելեան փողերը առ-
նեն. ու եօթներորդ օրը քաղաքին
բոլորտիքը եօթը անգամ պտը-
տիք. և ⁴քահանաները փողերը
5 հնչեցնեն. Ու երբոր Յոբելեան
եղջիւրները ուժով հնչեցնեն, և
դուք փողերուն ձայնը լսէք. բոլոր
ժողովուրդը մեծ աղաղակ մը հա-
նէ ։ և քաղաքին պարիսպները վար
պիտի իյնան, ու ժողովուրդին ա-
մէն մէկը շիտակ յառաջ երթալով
ներս պիտի մտնէ ։

6 Եւ Նաւէի որդին Յեսուն՝ քա-
հանաները կանչեց, ու անոնց ը-
սաւ. Ուխտին տապանակը վեր-
ցուցէք, ու Տէրոջը տապանակին
առջեւէն եօթը քահանայ եօթը
7 Յոբելեան փողեր առնեն ։ Ետքը
ժողովուրդին ըսաւ. Անցէք՝ ու
քաղաքին բոլորտիքը պտըտեցէք.
և զինուորները Տէրոջը տապանա-
8 կին առջեւը անցնին ։ Ու երբոր
Յեսու ժողովուրդին պատուիրեց,
եօթը քահանաները որ եօթը Յո-
բելեան փողերը ունէին, Տէրոջը
առջեւը անցնելով՝ փողերը հնչեցու-
ցին. ու Տէրոջը ուխտին տապա-
նակը անոնց ետեւէն կ'երթար ։

9 Եւ զինուորները փողերը հնչեցը-
նող քահանաներուն առջեւէն կ'եր-
թային. ⁵բայց վերջապահները
տապանակին ետեւէն ու քահանա-
ները փողերը հնչեցնելով կ'երթա-
10 յին ։ Եւ Յեսու՝ ժողովուրդին
պատուիրելով՝ ըսաւ. Ձեր աղա-
ղակ մի հանէք, և ձայներնիդ
չլսուի, ու ձեր բերնէն խօսք մը
չելլէ, մինչև ան օրը՝ որ ես ձեզի
ըսեմ թէ, Աղաղակ հանեցէք.
11 ան ատենը աղաղակեցէք ։ Ուստի
Տէրոջը տապանակը քաղաքին բո-
լորտիքը մէկ անգամ պտըտելէն
ետև բանակը դարձան, ու գիշերը
բանակին մէջը մնացին ։

12 Եւ Յեսու առտուանց կանուխ
ելաւ, ⁶ու քահանաները Տէրոջը
13 տապանակը վերցուցին ։ Եւ եօթը
Յոբելեան փողերը կրող եօթը քա-
հանաները Տէրոջը տապանակին
առջեւէն կ'երթային՝ փողերը հնչե-
ցընելով. ու զինուորները անոնց
առջեւէն կ'երթային. ու վերջա-
պահները Տէրոջը տապանակին ե-
տեւէն. և քահանաները փողերը հնչե-
14 ցընելով կ'երթային ։ Երկրորդ օրն
ալ քաղաքին բոլորտիքը մէկ ան-
գամ պտըտելով՝ բանակը դարձան.
15 վեց օր այսպէս ըրին ։ Ու եօթնե-
րորդ օրը կանուխ ելան՝ արշալու-
սին ծագած ատենը. ու քաղաքին
բոլորտիքը եօթը անգամ պտըտե-
ցան նոյն կերպով. միայն թէ ան
օրը՝ քաղաքին բոլորտիքը եօթը
16 անգամ պտըտեցան ։ Ու եօթնե-
րորդ անգամին երբոր քահանաները
փողերը հնչեցուցին, Յեսու ժողո-

Ր Տեմ Ծն․ լդ․ 25 ։
ժ Ծն․ լդ․ 14 ։ աթագ․ ժդ․ 6 ։ Տես Ղև․ ժը․ 3 ։ Գւ․ իդ․ 14 ։ Եզեկ․ ի․ 7 ։ իգ․ 3․ 8 ։
* Եբր․ գլոր-ցուցի ։
‡ Գլ․ դ․ 19 ։
† Այ՝ գլոր-րում ։
ւ Ել․ ժբ․ 6 ։ Թու․ թ․ 5 ։
ւ Ել․ ժզ․ 35 ։
ծ Ծն․ ժը․ 2 ։ լբ․ 24 ։ Ել․ իգ․ 23 ։ Զաք․ ա․ 8 ։ Գործ․ ա․ 10 ։
ւ Թու․ իբ․ 23 ։
հ Տես Ել․ իգ․ 20 ։ Դան․ ժ․ 13․ 21 ։ ժբ․ 1 ։ Յայտ․ ժբ․ 7 ։ ժթ․ 11․ 14 ։
յ Ծն․ ժէ․ 3 ։
ղ Ել․ գ․ 5 ։ Գործ․ է․ 33 ։
‡ Եբր․ երեսէն
⁼ բ Օր․ է․ 24 ։
բ Գւ․ բ․ 9 ։ 24 ։ ը․ 1 ։
‖ Կամ՝ խոյի եղջիւրէ

Ն․ ք․ զՓ․ 1451
գ Թու․ ժ․ 8 ։
դ Թու․ ժ․ 25 ։
ե Օր․ լ․ 25 ։

Ն. Ք. ԴՔ. 1451

վուրդին ըսաւ. Աղաղակեցէք.
քանզի Տէրը ** քաղաքը ձեր ձեռ-
17 քը տուաւ։ Եւ քաղաքը ու բո-
լոր անոր մէջը եղածը՝ Տէրոջմէ
նզոված ըլլան. միայն Ռախաբ
պոռնիկը ՚մեր խրկած լրտեսները
պահելուն համար ողջ մնայ, թէ՛
ինքը և թէ իրեն հետ տանը մէջ
18 բոլոր եղողները։ Բայց դուք ՚ա-
մէն կերպով զգուշանաք նզովա-
ծէն. չըլլայ որ նզովածէն առնե-
լով՝ դուք ալ նզոված ըլլաք, ու
Իսրայէլի բանակը նզովքի մէջ ձգե-
լով, ՚զանիկայ նեղութեան հան-
19 դըպցընէք։ Եւ բոլոր արծաթը
ու ոսկին՝ և պղնձէ ու երկաթէ
ամանները՝ Տէրոջը համար սուրբ
ըլլան. Տէրոջը գանձը մըտ-
նեն։
20 Ուստի ժողովուրդը աղաղակեց.
որովհետև փողերը հնչուեցան. ու
երբոր ժողովուրդը փողերուն ձայնը
լսեց, ու ժողովուրդը բարձրաձայն
աղաղակեց, ՚պարիսպները վար
ինկան. և ժողովուրդին ամէն մէկը
շիտակ յառաջ քաղաքը մտնելով՝
21 քաղաքը առին. Ու ՚բոլոր քաղա-
քին մէջը եղողը՝ այր և կին՝ երի-
տասարդ և ծեր՝ արջառ՝ ոչխար
ու էշ՝ սուրի բերնէ անցընելով կոր-
22 սընցուցին։ Եւ Յեսու այն երկիրը
լրտեսող երկու մարդոցը ըսաւ.
Այն պոռնիկ կնկանը տունը գացէք,
ու ՚ինչպէս որ անոր երդում ըրիք.
կնիկը ու անոր ամէն ունեցածը
23 անկէ դուրս հանեցէք։ Ուստի այն
լրտես երիտասարդները գացին, ու
Ռախաբը ՚և անոր հայրը ու մայրը
ու եղբայրները՝ և անոր ամէն ու-
նեցածը դուրս հանեցին, ու անոր
բոլոր ազգատոհմն ալ դուրս հա-
նեցին, և զանոնք Իսրայէլի բանա-
24 կին դուրսը կեցուցին։ Ու քա-
ղաքը՝ և բոլոր անոր մէջը եղածը
կրակով այրեցին. ՚միայն արծա-
թը ու ոսկին, և պղնձէ ու երկաթէ
ամանները՝ Տէրոջը տանը գանձին
25 մէջը դրին։ Այսպէս Յեսու ողջ
պահեց Ռախաբ պոռնիկը՝ ու անոր
հօրը տունը՝ և անոր ամէն ունեցա-
ծը. ու ՚անիկայ Իսրայէլի մէջ
բնակեցաւ մինչև այսօր. քանզի ա-
նիկայ պահեց այն լրտեսները՝ որոնք
Յեսու խրկեր էր Երիքովը լրտեսե-
լու համար։
26 Եւ այն ատենը Յեսու երդում
ընելով՝ ըսաւ. ՚Տէրոջը առջևը ա-
նիծեալ ըլլայ այն մարդը՝ որ ելլէ
ու աս Երիքով քաղաքը շինէ. իր
անդրանիկովը անոր հիմերը դնէ,
ու անոր դուներն ալ իր պզտիկ
տղովը կանգնէ։
27 ՚Եւ Տէրը Յեսուին հետն էր. ու

՚Գլ. բ. 4։ — ՚բ Օր. է. 26։ Յգ. 17։ Գլ. է. 1, 11, 12։ — ՚Գլ. է. 25։ գ Թագ. ժը. 17, 18։ Յովն. ա. 12։ — ՚Հմր 5։ Եբր. ժա. 30։ — ՚բ Օր. է. 2։ — ՚Գլ. բ. 14։ Եբր. ժա. 31։ — ՚Գլ. բ. 13։ — ՚Հմր 19։ — ՚Տես Մտթ. ա. 5։ — ՚գ Թագ. ժզ. 34։ — ՚Գլ. ա. 5։

՚անոր համբաւը բոլոր երկրին մէջ
տարածուեցաւ։

## ԳԼ. Է

1 Իսրայէլացիք կը յաղթուին Գայիի բնակիչներէն։ 6 Յեսու աս բանիս համար Աստուծոյ կը բողոքէ։ 10 Աստուած կ'իմացընէ անոր՝ թէ ինչ պարտի ընել։ 16 Աքարը վիճակով կը բռնուի։ 19 Անոր խոստովանութիւնը։ 22 Զանիկայ իր բոլոր ունեցածովը Աքովրի ձորին մէջ կը կորսընցընեն։

1 Բայց Իսրայէլի որդիքը նզովքի
վրայով յանցանք գործեցին.
քանզի Յուդայի ցեղէն Զարայի
որդւոյն *Զաբդիի որդւոյն Քար-
միին որդին ՚Աքարը՝ նզովածէն
առաւ, ու Տէրոջը բարկութիւնը
Իսրայէլի որդւոցը վրայ բորբոքե-
ցաւ։
2 Եւ Յեսու Երիքովէն մարդիկ-
ներ խրկեց դէպ ՚ի Գայի, որ Բե-
թաւանին մօտ է, ** Բեթէլին ա-
րևելեան կողմն է, և խօսեցաւ ա-
նոնց ըսելով. Ելէք ու այն երկիրը
լրտեսեցէք. և այն մարդիկը ելան՝
3 ու Գային լրտեսեցին։ Եւ Յե-
սուին դարձան, ու անոր ըսին.
Բոլոր ժողովուրդը չելլէ, հապա եր-
կու կամ իրեք հազար մարդու չափ
ելլեն, ու Գային զարնեն. բոլոր
ժողովուրդը հոն տանելով մի՛ յոգ-
նեցըներ. քանզի անոնք քիչուոր են։
4 Ուստի ժողովուրդէն իրեք հազարի
չափ մարդ հոն ելան. ՚բայց Գա-
5 յիի մարդոցը առջևէն փախան. Եւ
Գայիի մարդիկը՝ անոնցմէ երսուն-
ուվեց մարդու չափ զարկին. քան-
զի զանոնք դըրանը առջևէն մինչև
Սեբարիմը հալածեցին, ու զառ ՚ի
վայրին վրայ զանոնք զարկին. ուս-
տի ՚ժողովուրդին սիրտը հալեցաւ
ու ջուրի պէս եղաւ։
6 Եւ Յեսու ՚իր հանդերձները
պատռելով՝ Տէրոջը տապանակին
առջևը երեսին վրայ գետինը ինկաւ
մինչև իրիկուն, թէ՛ ինքը և թէ
Իսրայէլի ծերերը, ու ՚իրենց
7 գլխուն վրայ հող ցանեցին։ Եւ
Յեսու ըսաւ. Ո՛հ՝ Տէր Եհովայ,
՚ինչո՞ւ համար աս ժողովուրդը
Յորդանանու ասդին կողմը անցու-
ցիր, որ մեզ Ամորհացւոց ձեռքը
մատնես, ու մեզ կորսընցընես. ե-
րանի՜ թէ Յորդանանու անդին
8 կողմը գոհ ըլլալով մնայինք։ Ո՛հ
Տէ՛ր՝ Իսրայէլը իր թշնամիներուն
առջևը կռնակ դարձընելէն ետև՝
9 ալ ես ի՞նչ ըսեմ. Որովհետև Քա-
նանացիները ու երկրին բոլոր բնա-
կիչները լսելով՝ մեզ պիտի պաշա-
րեն, ու ՚մեր անունը երկրիս վրա-
յէն բոլորովին պիտի վերցընեն. այն
ատենը ՚քու մեծ անուանդ ի՞նչ
պիտի ընես։

Ն. Ք. ԴՔ. 1451

՚Գլ. Թ. 1, 3։ — *կամ Զամբրիի. ա Մն. բ. 6։ — ՚Գլ. իբ. 20։ ա Մն. բ. 7։ — ՚Ղև. իզ. 17։ բ Օր. իը. 25։ — ՚Գլ. բ. 9, 11։ Ղև. իզ. 36։ Սաղ. իբ. 14։ — ՚Ծն. լէ. 29, 34։ — ՚ա Թագ. դ. 12։ բ Թագ. ա. 2։ Յգ. 19։ Նեեմ. Թ. 1։ Յոբ. բ. 12։ — ՚Եղ. ե. 22։ դ Թագ. գ. 10։ — ՚Սաղ. ձգ. 4։ — ՚Տես Ել. լբ. 12։ Թուոց. ժդ. 13։

Ն․ Ք․ ԳՔ․ 1451

Բ Հմր 1․
Ժ Գլ․ Զ․ 17․ 18․
Է Տես Գոր․ Ե․ 1․ 2․
Ը Տես Թու․ ԺԴ․ 45․ Դատ․ Բ․ 14․
Ի Բ Օր․ Է․ 26․ Գլ․ Զ․ 18․
Ժ Ել․ ԺԹ․ 10․
Ե Գլ․ Գ․ 5․

10 Եւ Տէրը Յեսուին ըսաւ․ Ոտքի
վրայ ելի՛ր․ ինչո՞ւ համար այսպէս
11 երեսիդ վրայ ինկեր ես․ Բ Իսրայէլը
մեղք գործեց, և իմ անոնց հրամա-
յած ուխտս զանց ըրին․ Ժ քանզի
նզովածէն առին, ու գողութիւն
ըրի՛ն, և Է սուտ զրուցեցին, ու նաև
իրենց կարասիքներուն մէջը դրին․
12 Ը Ուստի Իսրայէլի որդիքը պիտի
չկրնան իրենց թշնամիներուն առ-
ջևը կենալ․ իրենց թշնամիներուն
առջևը կռնակ պիտի դարձընեն,
քանզի Ի նզոված եղան․ Ա ալ ձեր
հետը պիտի չըլլամ, թէ որ դուք
նզովուածը ձեր մէջէն բնաջինջ չը-
13 նէք․ Ել՛ի ժողովուրդը սրբէ, ու
ըսէ․ Է վաղուան համար սրբուե-
ցէք․ քանզի Իսրայէլին Տէր Աս-
տուածը այսպէս կ'ըսէ․ Ով Իսրա-
յէլ՝ ձեր մէջը նզոված կայ․ մինչև
որ նզովածը ձեր մէջէն չվերցընէք,
քու թշնամիներուդ առջևը պիտի
14 չկրնաս կենալ․ Ուստի առտուանց
ձեր ցեղերովը մօտենաք, ու Կ Տէրը
որ ցեղը կ'իմացնէ բռնելու ըլլայ, ա-
նիկայ իր ազգատոհմներովը մօ-
տենայ․ և Տէրը որ ազգատոհմը
բռնելու ըլլայ, անիկայ իր տունե-
րովը մօտենայ․ ու Տէրը որ տունը
բռնելու ըլլայ, անիկայ իր մարդիկ-
15 ներովը մօտենայ․ Յ Եւ ով որ նզո-
վածով բռնուի, կրակով պիտի
այրուի, թէ ինքը և թէ իր ամէն
ունեցածը․ քանզի Տէրոջը ուխտը
Ն զանց ըրաւ, ու Իսրայէլի մէջ
Ծ անզգամութիւն ըրաւ ։

Կ Առակ․ ԺԶ․ 33․
Յ Տես Ա Թագ․ ԺԴ․ 38․ 39․
Ն Հմր 11․
Ծ Ծն․ ԼԴ․ 7․ Դատ․ Ի․ 6․

16 Ուստի Յեսու առտուանց կանուխ
ելաւ, ու Իսրայէլը իր ցեղերովը
մօտեցուց, և Յուդայի ցեղը բռ-
17 նուեցաւ․ Ու Յուդայի ազգատոհմ-
ները մօտեցընելուն, Զարայեանց
ազգատոհմը բռնուեցաւ․ ու Զա-
րայեանց տոհմը մարդիկներովը մօ-
տեցընելուն, Զաբդին բռնուեցաւ․
18 Ետքը անոր տունը մարդիկներովը
մօտեցընելուն, Յուդայի ցեղէն
Զարայի որդւոյն Զաբդիի որդւոյն
Քարմիին որդին Աքարը Մ բռնուե-
19 ցաւ ։ Ան ատենը Յեսու Աքարին
ըսաւ․ Որդի՛ս՝ Յ հիմա Իսրայէլի
Տէր Աստուծոյն փառք տուր, ու
Ն անոր խոստովանէ՛, և
Ն քու ըրածդ հիմա ինծի յայտնէ՛,
20 ինծմէ մի՛ պահեր ։ Ու Աքարը պա-
տասխան տուաւ Յեսուին, և ըսաւ․
Իրաւցընէ ես Իսրայէլի Տէր Աս-
տուծոյն դէմ մեղք գործեցի, ու
21 ասանկ ասանկ բան մը ըրի․ Այս-
ինքն՝ աւարին մէջը մէկ աղուոր
Բ Բաբիլոնի վերարկու մը՝
ու երկու հարիւր սիկղ արծաթ՝ և
յիսուն սիկղի ծանրութեամբ մէկ
ոսկի լեզու մը տեսայ, ու անոնց

Մ Ա Թագ․ ԺԴ․ 42․
Յ Տես Ա Թագ․ Զ․ 5․ Երեմ․ ԺԳ․ 16․ Յով․ Թ․ 24․
Ն Թու․ Ե․ 6․ 7․ Բ Մն․ Լ․ 22․ Սաղ․ ԾԱ․ 3․ Դան․ Թ․ 4․
Ն Ա Թագ․ ԺԴ․ 43․

ցանկալով առի․ և ահա՛ անոնք իմ
վրանիս մէջ հողին տակը պահուած
են, ու արծաթը անոր տակն է ։
22 Ուստի Յեսու լրաբերներ խրկեց․
ու անոնք վրանը վազեցին․ և ահա՛
վրանին մէջը պահուած էր ան, ու
23 արծաթը անոր տակն էր․ Եւ զա-
նոնք վրանին մէջէն առնելով՝ Յե-
սուին ու բոլոր Իսրայէլի որդւոցը
բերին, և զանոնք Տէրոջը առջևը
դրին ։
24 Ան ատենը Յեսու ու իրեն հետ
բոլոր Իսրայէլը՝ Զարայեան Աքա-
րը, ու ան արծաթը՝ և վերարկուն՝
ու ոսկի լեզուն՝ և անոր տղաքը՝
աղջիկները՝ արջառները՝ էշերը՝
ոչխարները՝ վրանը ու անոր ամէն
բանը առին․ և զանոնք Ա Աքովրի
25 ձորը հանեցին ։ Ու Յեսու ըսաւ․
Ն Ինչո՞ւ համար դուն մեզ նեղեցիր․
Տէրը այսօր քեզ պիտի նեղէ․ Ուս-
տի բոլոր Իսրայէլը զանիկայ քարե-
րով քարկոծեցին, ու զանոնք քա-
րերով քարկոծելէն ետև՝ կրակով
26 այրեցին ։ Եւ անոր վրայ մէկ
մեծ քարակոյտ մը դիզեցին, որ կը
կենայ մինչև աս օրս ։ Ու Ա Տէրը իր
սաստիկ բարկութենէն դադարե-
ցաւ․ աս պատճառաւ ան տեղին
անունը Ա * Աքովրի ձոր ըսուեցաւ
մինչև աս օրս ։

Ն․ Ք․ ԳՔ․ 1451

Ա Հմր 26․ Գլ․ ԺԵ․ 7․
Ն Գլ․ Զ․ 18․ Ա Մն․ Բ․ 7․ Գաղ․ Ե․ 12․
Դ Բ Օր․ ԺԼ․ 5․
Ը Գլ․ Ր․ 29․ Բ Թագ․ ԺԸ․ 17․ Ովս․ Գ․ 53․
Ա Բ Օր․ ԺԳ․ 17․ Բ Թագ․ ԻԱ 14․
Ա Հմր 24․ Եսայ․ ԿԵ․ 10․ Ովս․ Բ․ 15․
* Այս է նեղութեան, կամ խռովութեան

ԳԼ․ Ը

1 Աստուած կը քաջալերէ Յեսուն ։ 3 Գայի քաղաքը առնուելուն հնարքը ։ 29 Գայիին թագաւորը կը կախուի ։ 30 Յեսու սեղան մը կը շինէ․ 32 քարերու վրայ կը դրէ օրէնքը․ 33 և բոլոր օրհնութիւնները ու անէծքները ժողովուրդին առջևը կը կարդայ ։

1 Եւ Տէրը Յեսուին ըսաւ․ Ա Մի
վախնար, ու մի՛ զարհուրիր․
բոլոր պատերազմող մարդիկները
հետդ առ, ու ելի՛ր դէպ 'ի Գայի
գնա․ Բ Ահա՛ Գայիի թագաւորը ու
անոր ժողովուրդը՛ և անոր քաղաքը
ու անոր երկիրը քու ձեռքդ տուի․
2 Եւ Գ Երիքովին ու անոր թագաւորին
ըրածիդ պէս, Գայիին ու անոր
թագաւորին ալ ընես․ միայն թէ
Դ անոր աւարը ու անասունները
ձեզի առնէք ։ Քաղաքին ետևի
կողմէն դարաններ պատրաստես ։
3 Ուստի Յեսու ու բոլոր պատերազ-
մող մարդիկները ոտք ելան, որ
Գայիի վրայ երթան․ և Յեսու եր-
սուն հազար զօրաւոր մարդ ընտ-
րեց, ու զանոնք գիշերով խրկեց․
4 Եւ անոնց պատուիրելով՝ ըսաւ․
Նայեցէ՛ք, Ե դուք քաղաքին ետևէն՝
ան քաղաքին համար դարանի մէջ
պիտի նստիք․ քաղաքէն շատ մի՛
հեռանաք, և ամէնքնիդ ալ պատ-
5 րաստ ըլլաք․ Ու ես իմ հետս եղող
բոլոր ժողովուրդով քաղաքին պի-

Ա Բ Օր․ Ա․ 21․ Է․ 18․ Լ․ 8․ Գլ․ Ա․ 9․
Բ Գլ․ Զ․ 2․
Գ Գլ․ Զ․ 21․
Դ Բ Օր․ Ի․ 14․
Ե Դատ․ Ի․ 29․

Ն. Ք. Զ. 1451

Ղ Դատ. ի. 32.

տի մօտենամ ու երբոր անոնք առջի անգամին պէս մեզի դէմ ել-
լեն, [Ղ] անոնց առջևէն պիտի փախ-
6 չինք. Ու անոնք մեր ետևէն պիտի
ելլեն, մինչև որ զանոնք քաղաքէն
զատենք. որովհետև անոնք պիտի
ըսեն թէ, Մեր առջևէն փախան
առջի անգամին պէս. ու մենք ա-
7 նոնց առջևէն պիտի փախչինք. Ան
ատենը դուք դարանէն ելլէք, ու
քաղաքը առնէք. քանզի ձեր Տէր
Աստուածը զանիկայ ձեր ձեռքը
8 պիտի տայ: Ու երբոր քաղաքը
առնէք, քաղաքը կրակով այրէք
Տէրոջը ըսածին պէս ընէք. [Ե] Ահա
9 ձեզի պատուիրեցի: Եւ Յեսու
զանոնք խրկեց. ու անոնք գացին
դարանը նստան՝ Բեթելի ու Գայիի
մէջտեղը. Գայիի արևմտեան կող-
մէն. և Յեսու ան գիշերը ժողո-
վուրդին մէջը մնաց:

Ե Բ Թագ. ժգ. 28.

10 Ու Յեսու առտուանց կանուխ
ելաւ՝ ու ժողովուրդը աչքէ ան-
ցուց. և ինքը Իսրայէլի ծերերուն
հետ՝ ժողովուրդին առջևէն դէպ 'ի
11 Գայի գնաց. [Ը] Եւ իր հետը եղող
բոլոր պատերազմական մարդիկներն
ալ ելան, ու մօտենալով՝ քաղա-
քին առջևը գացին, ու Գայիի
հիւսիսային կողմը բանակեցան. և
անոնց ու Գայիի մէջտեղը մէկ ձոր
12 մը կար: Եւ հինգ հազարի չափ
մարդ առաւ, ու զանոնք դարանի
մէջ նստեցուց Բեթելի ու Գայիի
մէջտեղը՝ *քաղաքին արևմտեան
13 կողմը: Ու ժողովուրդը քաղաքին
հիւսիսային կողմը դրաւ բոլոր բա-
նակը, ու քաղաքին արևմտեան
կողմը [Թ] դարանը. և Յեսու ան գի-
շերը ձորին մէջը գնաց:

Ը Հմր 5.

* Կամ՝ Գա-յիին

Թ Հմր 4.

14 Ու երբոր Գայիի Թագաւորը զա-
նիկայ տեսաւ, քաղաքին մարդիկ-
ներովը շուտով ու կանուխ դուրս
ելաւ, որ ինքը ու իր բոլոր ժողո-
վուրդը՝ որոշ ժամանակով մը դաշ-
տի վրայ Իսրայէլի դէմ պատերազ-
մին, ու [Ժ] չէր գիտեր որ քաղաքին
ետևը իրեն համար դարան պատրա-
15 ստած էր: Եւ Յեսու ու բոլոր
Իսրայէլը [Ի] անոնց առջևը զիրենք
զարնուածի պէս ցուցընելով՝ անա-
16 պատին ճամբան փախան: Ու քա-
ղաքին մէջը եղող բոլոր ժողովուր-
դը ժողվուեցաւ որ զանոնք հալա-
ծեն ու Յեսուին ետևէն իյնալով՝
17 քաղաքէն զատուեցան: Եւ Գայիի
ու Բեթելի մէջ մարդ չմնաց՝ որ
Իսրայէլին ետևէն չելլէ. ուստի
քաղաքը բաց թողուցին, ու Իս-
րայէլին ետևէն ինկան:

Ժ Դատ. ի. 34. Ժող. Թ. 12.

Ի Դատ. ի. 36, 40.

18 Եւ Տէրը Յեսուին ըսաւ. Ձեռքդ
եղած նիզակը դէպ 'ի Գայի երկըն-
ցուր. քանզի զանիկայ քու ձեռքդ
պիտի տամ. և Յեսու ձեռքը եղած
նիզակը դէպ 'ի քաղաքը երկըն-
19 ցուց. Ու դարանակալները շու-
տով իրենց տեղէն ելան, և անիկայ
իր ձեռքը երկընցուցածին պէս,
վազեցին քաղաքը մտան, ու առին
անիկայ, և շուտով մը քաղաքը
20 կրակով բռնկցուցին: Ու Գայիի
բնակիչները ետևնին դարձան տե-
սան որ՝ ահա քաղաքին ծուխը մին-
չև երկինքը կ'ելլէր. և անոնք հոս
կամ հոն փախչելու կարողութիւն
չունէին. ու անապատը փախչող
ժողովուրդն ալ՝ իր ետևէն ինկող-
21 ներուն վրայ դարձաւ: Եւ Յեսու
ու բոլոր Իսրայէլը երբոր տեսան որ
դարանակալները քաղաքը առին,
ու քաղաքին ծուխը վեր կ'ելլէր,
իրենք ալ ետ դարձան, ու Գայիի
22 մարդիկները զարկին: Մէկալներն
ալ քաղաքէն անոնց դէմը ելան.
ուստի մէկ կողմանէ ասոնք՝ ու մէ-
կալ կողմանէ ալ անոնք ըլլալով,
Գայիի մարդիկները Իսրայէլացւոց
մէջտեղը մնացին. ու զանոնք զար-
կին՝ մինչև որ Լանոնցմէ մարդ մը
23 ողջ չմնաց ու չազատեցաւ: Եւ
Գայիի Թագաւորը ողջ բռնեցին,
ու զանիկայ Յեսուին բերին:

Լ Բ Օր. է. 2.

24 Ու երբոր Իսրայէլացիք՝ Գայիի
բոլոր բնակիչները՝ զիրենք հալա-
ծողները դաշտին ու անապատին
մէջ ջարդեցին, ու անոնց ամէնքն
ալ սուրի բերնէ իյնալով՝ հատան,
բոլոր Իսրայէլացիք Գայի դարձան,
ու զանիկայ սուրի բերնէ անցու-
25 ցին: Եւ ան օրը ինկածներուն ա-
մէնը՝ թէ էրիկ մարդ և թէ կնիկ
մարդ, տասուերկու հազար էր,
այսինքն՝ Գայիի բոլոր մարդիկները:
26 Ու Յեսու նիզակով երկընցուցած
ձեռքը ետ չքաշեց, մինչև որ Գայիի
բոլոր բնակիչները բնաջինջ ըրաւ:
27 [Խ] Բայց Իսրայէլացիք, անասունները
ու քաղաքին աւարը իրենց առին,
Տէրոջը [Ծ] Յեսուին հրամայած խօս-
28 քին համեմատ: Եւ Յեսու՝ Գային
այրեց. ու զանիկայ [Կ] մշտնջենաւոր
աւերակներու դէզ ըրաւ մինչև
29 այսօր. [Հ] Եւ Գայիի Թագաւորը
ծառէ մը կախեց մինչև իրիկուն.
[Ձ] ու արևը մտնելուն՝ Յեսու հրա-
մայեց որ անոր մեռած մարմինը
ծառէն վար իջեցընեն. և զանիկայ
քաղաքին դրանը առջևը նետեցին,
ու [Ղ] անոր վրայ մէկ մեծ քարակոյտ
մը դիզեցին, որ կը կենայ մինչև այս-
օր:

Խ Տես Թու. լա. 22, 26.

Ծ Հմր 2.

Կ Բ Օր. ժգ. 16.

Հ Գլ. ժ. 26. Սաղ. ծէ. 40. ծժ. 5.

Ձ Բ Օր. իա. 23. Գլ. ժ. 27.

Ղ Գլ. է. 26. ժ. 27.

30 Ան ատենը Յեսու՝ Իսրայէլի Տէր
Աստուծոյն սեղան մը շինեց [Ճ] Գէ-
31 բաղ լեռան վրայ. Ինչպէս որ Տէ-
րոջը ծառան Մովսէս Իսրայէլի որ-
դւոցը պատուիրեր էր. ուր [Մ] Մովսէ-

Ճ Բ Օր. իէ. 4, 5.

Մ Ել. ի. 25. Բ Օր. իէ. 5, 6.

Ն. Ք. ԳՖ. 1451

սին օրինաց գրքին մէջի գրուածին
պէս՝ Յեսու ալ սեղանը ամբողջ
քարերէ շինեց, որոնց վրայ երկաթ
չէր դպած. և անոր վրայ Տէրոջը
ողջակէզներ ու խաղաղութեան
32 զոհեր մատուցին։ Եւ հոն ան
քարերուն վրայ գրեց Մովսէսին օ-
րինաց գրքին օրինակը, որն որ Իս-
33 րայէլի որդւոցը առջեւ գրեց։ Ու
բոլոր Իսրայէլը՝ և անոնց ծերերը՝
ու ոստիկանները՝ և դատաւորները՝
տապանակին մէկ կողմէն ու մէկալ
կողմէն՝ Տէրոջը ուխտին տապա-
նակը վերցընող Ղեւտացի քահանա-
ներուն առջեւէն կ'երթային, թէ
օտարականները և թէ բնակները.
անոնց կէսը Գարիզին լեռանը կող-
մը՝ ու կէսն ալ Գեբաղ լեռանը
կողմը կայնեցան. ինչպէս որ Տէ-
րոջը ծառան Մովսէս պատուիրեր
էր, որ առաջ Իսրայէլի ժողովուր-
34 դը օրհնէն։ Եւ անկէ ետեւ օրէն-
քին բոլոր խօսքերը կարդաց, թէ
օրհնութիւնները և թէ անէծքները,
ինչ որ գրուած էր օրինաց գրքին
35 մէջը։ Մովսէսին բոլոր պատուի-
րածներէն բնաւ խօսք մը չմնաց, որ
զանիկայ Յեսու Իսրայէլի բոլոր ժո-
ղովքին՝ և անոնց կիներուն ու
տղաքներուն՝ և անոնց մէջը պտը-
տող օտարականին առջեւը չկար-
դայ։

## ԳԼ. Թ

1 Թագաւորները կը միաբանին Իսրայէլին դէմ։ 3 Գաբաւոնացիք խաբէութեամբ խաղաղութեան ուխտ մը ձեռք կը բերեն։ 16 ասոր համար յաւիտենական ծառայութեան կը դատապարտուին։

1 Ու երբոր Յորդանանու ասդիի
կողմը եղող բոլոր թագաւորնե-
րը՝ որոնք լեռան վրայ, դաշտի վը-
րայ, ու Մեծ ծովուն բոլոր եզեր-
քը՝ մինչեւ Լիբանանին դիմացը էին
եղողները, այսինքն Քետացիք, Ա-
մորհացիք, Քանանացիք, Փերե-
զացիք, Խեւացիք ու Յեբուսացիք
2 այս բաները լսեցին, միաբանու-
թեամբ ժողվուեցան՝ որ Յեսուին
ու Իսրայէլին դէմ պատերազմին։
3 Բայց Գաբաւոնի բնակիչները
երբոր լսեցին ինչ որ Յեսու Երի-
4 քովին ու Գային ըրեր էր, Իրենք
ալ վարպետութիւն մը բանեցու-
ցին. գացին պաշարներ պատրաս-
տեցին, ու իրենց էշերուն վրայ հին
քուրձեր, ու հին՝ պատռած ու
կարկըտած գինիի տիկեր դրին,
5 Եւ իրենց ոտքերուն կօշիկները հին-
ցած ու կարկըտած էին, ու վրա-
նին ալ հին լաթեր առին. և բոլոր
իրենց պաշար առած հացը՝ չորցած
6 ու մգլած էր. Ու բանակը գա-
ցին Յեսուին Գաղգաղայի մէջ, և
անոր ու Իսրայէլի մարդիկներուն ը-
սին. Մենք հեռու երկրէ կու գանք,
ուստի հիմա մեզի հետ դաշնակցու-
7 թիւն ըրէք։ Ան ատենը Իսրայէլի
մարդիկները ան Խեւացիներուն ը-
սին. Գուցէ դուք մեր մէջը կը
բնակիք. ու ձեզի հետ ինչպէս
8 դաշնակցութիւն ընենք։ Բայց ա-
նոնք Յեսուին ըսին. Մենք քու
ծառաներդ ենք. և Յեսու անոնց
ըսաւ. Դուք ո՞վ էք, և ուսկի՞ց
9 կու գաք. Ու անոր ըսին. Քու
ծառաներդ խիստ հեռու երկրէ ե-
կած են՝ քու Եհովայ Աստուծոյդ
անուանը համար. քանզի անոր
համբաւը՝ ու Եգիպտոսի մէջ բոլոր
10 ըրածները լսեցինք. Ու նաեւ Յոր-
դանանու անդիի կողմը եղող Ա-
մորհացւոց երկու թագաւորնե-
րուն՝ Եսեբոնի Սեհոն թագաւորին
ու Աստարովթ եղող Բասանի
Ովգ թագաւորին դէմ բոլոր ըրած
11 բաները լսեցինք. Եւ մեր ծերերը ու
մեր երկրին բոլոր բնակիչները մեզի
խօսեցան՝ ու ըսին. Ձեռքերնիդ
ճամբու համար պաշար առէք, և
զանոնք դիմաւորելու գացէք, ու
անոնց ըսէ՛ք. Մենք ձեր ծառա-
ներն ենք. հիմա մեզի հետ դաշ-
12 նակցութիւն ըրէք։ Ան օրը՝ որ
մենք ելանք ձեզի գալու համար,
աս պաշարի հացերնիս մեր տունե-
րէն տաք առինք. և ահա հիմա
13 չորցած ու մգլած են. Եւ աս գինիի
տիկերը նոր էին, երբոր լեցուցինք,
բայց ահա պատռած են. ու աս մեր
հանդերձները և կօշիկները՝ ճամ-
բուն խիստ երկայնութեանը հա-
14 մար հինցան։ Ու անոնց պաշա-
րէն նայելով՝ ան մարդիկները ըն-
դունեցին, ու Տէրոջը չհարցու-
15 ցին։ Եւ Յեսու անոնց հետ խա-
ղաղութիւն ըրաւ, ու անոնց ուխ-
տեց՝ որ զանոնք ապրեցընէ. և ժո-
ղովքին իշխաններն ալ անոնց եր-
դում ըրին։
16 Ու անոնց հետ դաշնակցութիւն
ընելէն երեք օր ետքը՝ լսեցին որ ա-
նոնք իրենց դրացիներն են, ու ի-
17 րենց մէջը կը բնակին։ Եւ Իսրայէլի
որդիքը չուելով՝ երրորդ օրը անոնց
քաղաքները մտան. ու անոնց քա-
ղաքները Գաբաւոն՝ Կեփիրա՝ Բէ-
18 րովթ և Կարիաթարիմ էին։ Ու
Իսրայէլի որդիքը զանոնք չզարկին.
քանզի ժողովքին իշխանները՝ Իս-
րայէլի Տէր Աստուծոյն անունովը
անոնց երդում ըրեր էին. բայց բո-
լոր ժողովքը իշխաններուն դէմ
տրտնջեցին։
19 Եւ ամէն իշխանները՝ բոլոր ժո-
ղովքին ըսին. Մենք Իսրայէլի Տէր
Աստուծոյն անունովը անոնց եր-

Ել. ի. 24. — Օր. իէ. 2, 8. — Օր. լա. 9, 25. — Օր. լա. 12. — Օր. ժա. 29. իէ. 12. — Օր. լա. 11. Նեեմ. ը. 3. — Օր. իը. 2, 15, 45. իթ. 20, 21. Լ. 19. — Օր. լա. 12. — Հմր 33. — Թուոց. լդ. 6. — Ել. գ. 17. իգ. 23. — Սաղ. ձգ. 3, 5. — Գլ. ժ. 2. բ Թագ. իա. 2. — Գլ. զ. 27. — Եբր. կապած.

Ն. Ք. ԳՖ. 1451

Գլ. ժա. 19. — Ել. իգ. 32. բ Օր. է. 2. ի. 16. Դատ. բ. 2. — բ Օր. ի. 11. դ Թագ. ժ. 5. — բ Օր. ի. 15. — Ել. ժե. 14. Յես. բ. 10. — Թուոց. իա. 24, 33. — Կամ՝ Իսրայէլի մարդիկը անոնց պաշարէն առին. — Թուոց. իէ. 21. Ես. լ. 1, 2. Տես Դատ. ա. 1. ա Թագ. իբ. 10. իգ. 10, 11. Լ. 8. բ Թագ. բ. 1. ե. 19. — Գլ. ժա. 19. բ Թագ. իա. 2. — Գլ. ժը. 25, 26, 28. Եզր. բ. 25. — Ժող. ե. 2. Սաղ. ժե. 4.

Ն․ Ք․ ՂՔ․
1451

յ Տե՛ս Բ Թագ․ իա․ 1, 2, 6 ։ Եզեկ․ ժէ․ 13, 15, 18, 19 ։ Զաք․ ե․ 3․ 4 ։ Մաղ․ գ․ 5 ։
ղ Բ Օր․ իԹ․ 11 ։
ճ Հմր 15 ։
մ Հմր 6, 9 ։
յ Հմր 16 ։
ն Ծն․ Թ․ 25 ։
շ Հմր 21, 27 ։
ո Ել․ իգ․ 32 ։ Բ Օր․ է․ 1, 2 ։
չ Ել․ ժե․ 14 ։
պ Ծն․ ժզ․ 6 ։
ջ Հմր 21, 23 ։
ռ Բ Օր․ ժբ․ 5 ։

դուռ ըրինք . ու հիմա չենք կրնար
20 անոնց դպչիլ ։ Անոնց այսպէս ը-
նենք . զանոնք ողջ թողունք . որ
յ մեր վրայ բարկութիւն չգայ՝ ա-
նոնց երդում ընելնուս համար ։
21 Ուստի իշխանները անոնց ըսին .
Թող ողջ մնան . բայց ղբոլոր ժո-
ղովքին փայտակոտորներ ու ջրկիր-
ներ ըլլան . և փայտակոտորներ ու
ջրկիրներ եղան . ինչպէս որ իշխան-
ները ճանոնց ըսին ։
22 Երբոր Յեսու զանոնք կանչեց . ու
անոնց խօսեցաւ՝ ըսելով . Ինչու
համար մեզ խաբեցիք ու ըսիք թէ՝
մՁեզմէ շատ հեռու ենք , ու յդուք
23 մեր մէջը կը բնակիք . Ուրեմն դուք
հիմա նանիծեալ էք , ու իմ Աս-
տուծոյս տանը համար՝ ձեզմէ ծա-
ռայ , շփայտակոտոր ու ջրկիր չը-
24 պակսի ։ Եւ անոնք Յեսուին պա-
տասխան տուին՝ ու ըսին . Քանզի
քու ծառաներդ ստուգիւ իմացան ,
որ քու Եհովայ Աստուածդ ոիր
ծառային Մովսէսին հրամայեր է
որ բոլոր երկիրը ձեզի տալու , ու
որ երկրիս բոլոր բնակիչները ձեր
առջեւէն բնաջինջ ընելու . ուստի
չմենք ձեր պատճառաւը՝ մեր ան-
ձերուն համար շատ վախցանք , ու
25 աս բանը ըրինք ։ Եւ ահա հիմա
պքու ձեռքդ ենք . քեզի ինչ որ
հաճոյ ու արդար կ'երեւնայ , ան ըրէ
26 մեզի ։ Ուստի անոնց այնպէս ըրաւ ,
և զանոնք Իսրայէլի որդւոցը ձեռ-
քէն ազատեց , ու զանոնք չմեռ-
27 ցուցին ։ Եւ Յեսու նոյն օրը՝
ջփայտակոտոր ու ջրկիր ըրաւ զա-
նոնք ժողովքին ու Տէրոջը սեղա-
նին համար , ռր Տէրոջը ընտրելու
տեղը ծառայեն մինչև աս օրս ։

## ԳԼ․ Ժ

1 Հինգ թագաւորներ Գաբաւոնի դէմ կը պատերազմին ։ 6 Յեսու՝ անոր օգնութեան կը հասնի ։ 10 Աստուած կը պատերազմի անոնց հետ կարկուտներով ։ 12 Արեգակը ու լուսինը անշարժ կը կենան՝ Յեսուին խօսքովը ։ 16 Հինգ թագաւորները այրի մը մէջ կը պահուին ։ 21 Յեսու անկէ դուրս հանել կու տայ զանոնք , 24 ու անոնց հետ անարգանօք վարուելով՝ 26 կը կախէ զանոնք ։ 28 Իսրայէլի որդիքը ուրիշ եօթը թագաւորներ ալ կը յաղթեն ։ 43 Յեսու՝ Գաղգաղա կը դառնայ ։

ա Գլ․ զ․ 21 ։
բ Գլ․ ը․ 22, 26, 28 ։
գ Գլ․ Թ․ 15 ։
դ Ել․ ժե․ 14, 15, 16 ։ Բ Օր․ ժա․ 25 ։

1 Ու երբոր Երուսաղեմի Ադոնիսե-
դեկ թագաւորը լսեց թէ , Յե-
սու Գային առաւ , ու զանիկայ բո-
լորովին կործանեց . աԻնչ որ
Երիքովին ու անոր թագաւորին ը-
րաւ , բԳային ու անոր թագաւորին
ալ այնպէս ըրաւ . և թէ գԳա-
բաւոնի բնակիչները Իսրայէլացւոց
հետ հաշտութիւն ըրին . ու անոնց
2 մէջը մնացին , դՇատ վախցան ի-
րեն ու իր ժողովուրդը . քանզի Գա-
բաւոնը՝ թագաւորանիստ քաղա-
քի մը պէս՝ մեծ քաղաք մըն էր .
ու անիկայ Գայիէն մեծ էր , և անոր
3 բոլոր մարդիկները զօրաւոր էին ։ Ա-
սոր համար Երուսաղեմի Ադոնիսե-
դեկ թագաւորը՝ Քեբրոնի Հօհամ
թագաւորին՝ Յերիմութի Փիրամ
թագաւորին՝ ու Լաքիսի Յափիէ
թագաւորին՝ ու Էգղոնի Դաբիր
թագաւորին մարդ խրկեց՝ ըսելով .
4 Ինծի ելէք , ու ինծի օգնութիւն
ըրէք որ Գաբաւոնը զարնենք .
եքանզի Յեսուին հետ ու Իսրայէլի
որդւոցը հետ հաշտութիւն ըրաւ ։
5 Ուստի Ամօրհացւոց հինգ թագա-
ւորները՝ Երուսաղեմի թագաւորը ,
Քեբրոնի թագաւորը , Յերիմութի
թագաւորը , Լաքիսի թագաւորը
ու Էգղոնի թագաւորը զժողվուե-
ցան . և իրենք ու իրենց բոլոր բա-
նակները ելան , և Գաբաւոնին
քովը բանակ դրին , ու անոր դէմ
պատերազմ ըրին ։
6 Եւ Գաբաւոնի բնակիչները՝
էԳաղգաղայի մէջ բանակը Յե-
սուին մարդ խրկեցին՝ ըսելով . Քու
ծառաներէդ ձեռքդ մի՛ քաշեր ,
շուտով մեզի ել , մեզ ազատէ , ու
մեզի օգնութիւն ըրէ . քանզի լեռ-
նաբնակ Ամօրհացւոց բոլոր թա-
գաւորները մեր վրայ ժողվուեցան ։
7 Եւ Յեսու՝ ինքը ու ըիրեն հետ բո-
լոր պատերազմական մարդիկը՝ և
զօրքին բոլոր զօրաւորները Գաղգա-
8 ղայէն ելան ։ Ու Տէրը Յեսուին
ըսաւ . Թ Անոնցմէ մի վախնար .
քանզի զանոնք քու ձեռքդ տուի .
ժ ընաւ անոնցմէ մէկը պիտի չկարե-
9 նայ քու առջեւդ կայնիլ ։ Եւ Յե-
սու՝ Գաղգաղայէն բոլոր գիշերը
քալելով՝ յանկարծակի անոնց վրայ
10 հասաւ ։ Ու Տէրը իխռովեցուց
զանոնք Իսրայէլին առջեւը , և զա-
նոնք Գաբաւոնի քով մեծ կոտորա-
ծով մը կոտրեց , ու զանոնք լԲե-
թորոն ելլելու ճամբուն վրայ հա-
լածեց , և զանոնք մինչև խԱզեկա
11 ու Մակեդա զարկաւ ։ Ու երբոր
անոնք Իսրայէլին առջեւէն կը փախ-
չէին , ու Բեթորոնէն վար կ'իջ-
նէին , ծՏէրը անոնց վրայ երկինքէն
կարկուտի մեծ քարեր նետեց մինչև
Ազեկա , ու մեռան . կարկուտին
քարերէն մեռնողները՝ Իսրայէլի
որդւոցը սրով մեռցուցածներէն
շատ էին ։
12 Ան ատենը Յեսու Տէրոջը հետ
խօսեցաւ , ան օրը՝ որ Տէրը Ամօր-
հացիները Իսրայէլի որդւոց ձեռքը
տուաւ , ու Իսրայէլին առջեւը ը-
սաւ . կԱ՛րև , դուն Գաբաւոնին
դիմացը կայնէ . լուսին , դուն ալ
ճԱյեղոնի ձորին դիմացը կայնէ ։

Ն․ Ք․ ՂՔ․
1451

ե Հմր 1 ։ Գլ․ Թ․ 15 ։
զ Գլ․ Թ․ 2 ։
է Գլ․ ե․ 10 ։ Թ․ 6 ։
ը Գլ․ ը․ 1 ։
Թ Գլ․ ժա․ 6 ։ Դատ․ դ․ 14 ։
ժ Գլ․ ա․ 5 ։
ի Դատ․ դ․ 15 ։ Ա Թագ․ է․ 10, 12 ։ Սաղ․ ժը․ 14 ։ Ես․ իը․ 21 ։
լ Գլ․ ժզ․ 3, 5 ։
խ Գլ․ ժե․ 35 ։
ծ Սաղ․ ժը․ 13, 14 ։ Հէ․ 17 ։ Ես․ լ․ 30 ։ Յայտ․ ժզ․ 21 ։
կ Ես․ իը․ 21 ։ Ամբ․ գ․ 11 ։
ճ Դատ․ ժբ․ 12 ։

Ն. Ք. ՂՖ.
1451

ՅԲթագ. ա. 18։
* Կամ՝ Ու-ղիղին
ՂՏեւ Եւ. լա. 8։
ՖԲ Օր. ա. 30։ Հմր 42։ Գլ. իգ. 3։
ՃՀմր 43։
ՅԵլ. ժա. 7։
ՆՍաղ. ճէ. 40։ ճժ. 5։ ճխթ. 8, 9։ Եւ. իղ. 5, 6։ Մաղ. դ. 3։
ՇԲ Օր. լա. 6, 8։ Գլ. ա. 9։
ՈԲ Օր. գ. 21։ Է. 19։

13 Ու արեւը կայնեցաւ, եւ լուսինը իր
տեղը մնաց, մինչեւ որ ժողովուրդը
իր թշնամիներէն վրէժ առաւ ։
ՅՄիթէ աս ինկայ *Ուղղութեան
գրքին մէջը գրուած չէ՞ . ուստի
արեւը երկինքին մէջտեղը կայնե-
ցաւ, ու լման մէկ օրի մը չափ
14 մտնելու չարտորաց ։ ՂԱնոր պէս
օր մը չեղաւ, ոչ առաջ ու ոչ ետ-
քը, որ Տէրը մարդու ձայնը լսեց .
քանզի ՖՏէրը Իսրայէլի համար
պատերազմեցաւ ։
15 ՃԵտքը Յեսու ու անոր հետ բո-
լոր Իսրայէլը՝ Գաղգաղա բանակը
16 դարձան ։ Եւ հինգ թագաւորները
փախան, ու Մակեդա այրի մը մէջ
17 պահուեցան ։ Եւ Յեսուին պատ-
մուեցաւ՝ ըսելով . Ան հինգ թա-
գաւորները Մակեդա այրի մը մէջ
18 պահուած գտնուեցան ։ Եւ Յե-
սու ըսաւ . Այրին բերանը մեծ
քարեր գլորեցէք՝ ու անոր վրայ
մարդիկներ դրէք, որ պահպանու-
19 թիւն ընեն . Բայց դուք մի՛ կայ-
նիք, ձեր թշնամիները հալածե-
ցէք, ու անոնց ետեւինները զար-
կէք, եւ անոնց թող մի՛ տաք որ
իրենց քաղաքները մտնեն . քանզի
ձեր Տէր Աստուածը զանոնք ձեր
20 ձեռքը մատնեց ։ Ու երբոր Յեսու
Իսրայէլի որդւոցը հետ զանոնք
խիստ մեծ կոտորածով մը կոտրեց,
ու զանոնք հատցուց լմնցուց, եւ
անոնց փախստականները պարսպա-
21 ւոր քաղաքներու մէջ մտան, Բոլոր
ժողովուրդը խաղաղութեամբ Մա-
կեդա՝ բանակը Յեսուին դարձաւ .
ՅՈւ Իսրայէլի որդւոցը դէմ բնաւ
մէկը իր լեզուն չշարժեց ։
22 Ան ատենը Յեսու ըսաւ . Այրին
բերանը բացէք, ու այրէն ան հինգ
թագաւորները հանեցէ՛ք ինծի բե-
23 րէք ։ Եւ այնպէս ըրին . ու այրէն
ան հինգ թագաւորները՝ այսինքն
Երուսաղէմի թագաւորը՝ Քեբրո-
նի թագաւորը՝ Յերիմութի թա-
գաւորը՝ Լաքիսի թագաւորը ու
Եգղոնի թագաւորը հանեցին անոր
24 քովը ։ Ու երբոր աս թագաւոր-
ները Յեսուին առջեւը հանեցին,
Յեսու Իսրայէլի բոլոր մարդիկները
կանչեց, ու իրեն հետ գացող պա-
տերազմողաց գլխաւորներուն ը-
սաւ . Մօտեցէ՛ք, ու ՆՁեր ոտքերը
աս թագաւորներուն պարանոցնե-
րուն վրայ դրէք . եւ անոնք մօտե-
ցան, ու իրենց ոտքերը անոնց պա-
25 րանոցներուն վրայ դրին ։ Եւ
Յեսու անոնց ըսաւ . ՇՄի՛ վախնաք
ու մի՛ զարհուրիք, ուժովցէ՛ք եւ
քաջասիրտ եղէք . քանզի ՈՏէրը
ասանկ պիտի ընէ ձեր ամէն թշնա-
միներուն, որոնց հետ որ դուք պի-
26 տի պատերազմիք ։ Եւ անկէ ետեւ
Յեսու զանոնք զարկաւ մեռցուց,
ու զանոնք հինգ ծառէ կախեց . եւ
Չծառերուն վրայ մինչեւ իրիկուն
27 կախուած մնացին ։ Ու արեւը
մտնելուն՝ Յեսու հրամայեց, ու
Դզանոնք ծառերուն վրայէն իջե-
ցուցին, եւ իրենց պահուած այրին
մէջը նետեցին զանոնք, ու այրին
բերանը մեծ քարեր դրին, որ կը կե-
նան մինչեւ այսօր ։
28 Եւ Յեսու նոյն օրը Մակեդան
ալ առաւ . ու զանիկայ սուրի բեր-
նէ անցուց, եւ անոր թագաւորը՝
ու անոր մէջ գտնուած բոլոր հոգի-
ները կորսընցուց, ու մէկը ողջ չը-
թողուց . ու Մակեդայի թագաւո-
րին ալ անանկ ըրաւ, Ըինչպէս որ
Երիքովի թագաւորին ըրած էր ։
29 Ետքը Յեսու եւ իրեն հետ բոլոր
Իսրայէլը՝ Մակեդայէն Լեբնա ան-
ցան, ու Լեբնային դէմ պատերազ-
30 մեցան . Եւ Տէրը զանիկայ ալ ա-
նոր թագաւորովը՝ Իսրայէլին ձեռ-
քը մատնեց, եւ զանիկայ ու անոր
մէջ գտնուած բոլոր հոգիները
սուրի բերնէ անցուցին, ու մէկը
ողջ չթողուցին . եւ անոր թագա-
ւորին անանկ ըրին, ինչպէս որ Ե-
րիքովի թագաւորին ըրած էին ։
31 Ետքը Յեսու ու իրեն հետ բոլոր
Իսրայէլը՝ Լեբնայէն Լաքիսը ան-
ցան, եւ անոր քովը բանակելով,
32 անոր դէմ պատերազմեցան . Եւ
Տէրը՝ Լաքիսը Իսրայէլին ձեռքը
մատնեց, եւ զանիկայ երկրորդ օրը
առնելով, զանիկայ ու անոր մէջ
գտնուած բոլոր հոգիները սուրի
բերնէ անցուցին, ինչպէս որ Լեբ-
նային ըրած էին ։
33 Ան ատենը Գազերի Հորամ թա-
գաւորը Լաքիսին օգնութիւն ընե-
լու ելաւ . եւ Յեսու զանիկայ ու ա-
նոր ժողովուրդը կոտրեց, անանկ
որ՝ անոնցմէ մէկը ողջ չմնաց ։
34 Ետքը Յեսու եւ իրեն հետ բոլոր
Իսրայէլը՝ Լաքիսէն Եգղոն անցան,
եւ անոր քովը բանակելով, անոր
35 դէմ պատերազմ ըրին . Եւ զանի-
կայ նոյն օրը առնելով՝ սուրի բեր-
նէ անցուցին . ու Յեսու նոյն օրը՝
անոր մէջ գտնուած բոլոր հոգինե-
րը կորսընցուց, ինչպէս որ Լաքի-
սին ըրած էր ։
36 Ետքը Յեսու ու իրեն հետ բոլոր
Իսրայէլը՝ Եգղոնէն ՌՔեբրոն ելան,
ու անոր դէմ պատերազմ ըրին .
37 Եւ զանիկայ առնելէն ետքը՝ սուրի
բերնէ անցուցին զանիկայ ու անոր
թագաւորը, եւ անոր բոլոր քա-
ղաքները, ու անոր մէջ գտնուած
բոլոր հոգիները . ու մէկը ողջ չթո-
ղուցին, ինչպէս որ Եգղոնին ըրին .

Ն. Ք. ՂՖ.
1451

ՉԳլ. ը. 29։
ԴԲ Օր. իա. 23։ Գլ. ը. 29։
ԸԳլ. զ. 21։
ՌՏեւ Գլ. ժդ. 13։ ժե. 13։ Դատ. ա. 10։

Ն. Ք. Ք. 1451

պյսպէս զանիկայ ու անոր մէջ
գտնուած բոլոր հոգիները կորսըն-
ցուց ։

ա Տես գլ. ժե. 15. Դատ. ա. 11.

38 Ետքը Յեսու և իրեն հետ բոլոր
Իսրայէլը Դաբիր դարձաւ, ու
39 անոր հետ պատերազմեցաւ ։ Եւ
զանիկայ ու անոր թագաւորը և
անոր բոլոր քաղաքները առին, ու
զանոնք սուրի բերնէ անցուցին. և
անոր մէջ գտնուած բոլոր հոգիները
կորսընցուցին. ու մէկը ողջ չթո-
ղուցին. ինչպէս որ Քեբրոնին ը-
րաւ, և ինչպէս որ Լեբնային ու ա-
նոր թագաւորին ըրաւ, անանկ ալ
Դաբիրին ու անոր թագաւորին ը-
րաւ ։
40 Եւ Յեսու բոլոր լեռնային՝ հա-
րաւային՝ դաշտային՝ ու լեռնե-
րուն տակը եղած երկիրները և ա-
նոնց բոլոր թագաւորները զարկաւ.
ու մէկը ողջ չթողուց, հապա ամէն
շնչաւորը մեռցուց, ինչպէս որ Իս-
րայէլին Տէր Աստուածը պատուի-
41 րեր էր ։ Եւ Յեսու Կադէս բառ-
նեայէն մինչև Գազա, ու բոլոր
Գոսոմի երկիրը մինչև Գաբաւոն՝
42 զանոնք զարկաւ ։ Եւ աս բոլոր
թագաւորները ու անոնց երկիրը՝
Յեսու մէկէն առաւ. քանզի Իս-
րայէլին համար՝ Իսրայէլի Տէր Աս-
43 տուածը պատերազմ կ՚ընէր ։ Եւ
Յեսու ու իրեն հետ բոլոր Իսրայէ-
լը՝ Գաղգաղա բանակը դարձան ։

գ Բ Օր. ի. 16. 17.
դ Ծն. ժ. 19.
ե Գլ. ժա. 16.
զ Հմր 14.

## ԳԼ. ԺԱ.

1 Քանի մը թագաւորներ Մառոնի ջուրին քովը կը յաղթուին. 10 Հասորը կը բռնուի ու կրակով կ՚այրուի. 16 Յեսու ան բոլոր երկիրը կ՚առնէ. 21 Ենակիմները կը ջարդէ ։

1450

1 Եւ Հասորի Յաբին թագաւորը
երբոր աս բաները լսեց. Մադոնի
Յոբաբ թագաւորին՝ և Սամրոնի
թագաւորին ու Աքսափի թագա-
2 ւորին Եւ հիւսիսային լեռները՝
ու Քեներեթի հարաւային դաշտը
ու հովիտը և արևմտեան կողմը՝
Դովրի գաւառներուն մէջը եղող
3 թագաւորներուն՝ Արևելեան ու
արևմտեան կողմը եղող Քանանա-
ցիներուն՝ Ամորհացիներուն՝ Քե-
տացիներուն՝ Փերեզացիներուն ու
լեռնաբնակ Յեբուսացիներուն՝ և
Հերմոնին տակը Մասփայի եր-
կիրը եղող Խևացիներուն մարդ
4 ղրկեց ։ Ուստի անոնք իրենց բո-
լոր բանակներովը ու շատ ժողո-
վուրդով ելան, որ ծովուն եզերքը
եղող աւազին չափ բազմաթիւ էին.
և հետերնին խիստ շատ ձիեր ու
5 կառքեր ունէին ։ Եւ աս բոլոր թա-
գաւորները միաբանելով՝ մէկտեղ
գացին Մառոնի ջուրին քովը բա-
նակեցան, որ Իսրայէլին հետ պա-
տերազմին ։

ա Գլ. ժթ. 15.
բ Թու. լդ. 11.
գ Գլ. ժէ. 11. Դատ. ա. 27. Գ Թագ. դ. 11.
դ Գլ. ժգ. 11.
ե Ծն. լա. 49.
զ Դատ. գ. 3.
է Գլ. ժ. 3.
ը Ծն. իբ. 17. լբ. 12. Դատ. է. 12. Ա Թագ. ժգ. 5.

Ն. Ք. Ք. 1450

6 Եւ Տէրը Յեսուին ըսաւ. Անոնց
երեսէն մի վախնար, քանզի վաղը
աս ատենս ես անոնց ամէնը Իսրա-
յէլին առջևը կոտրուելու պիտի
մատնեմ. անոնց ձիերուն ջիղերը
պիտի կտրես. ու անոնց կառքերն
7 ալ կրակով այրես ։ Ուստի Յե-
սու և իրեն հետ բոլոր պատերազ-
մական ժողովուրդը՝ յանկարծակի
Մառոնի ջուրին քովը անոնց դէմ
երթալով՝ վրանին յարձակեցան ։
8 Եւ Տէրը զանոնք Իսրայէլին ձեռքը
տուաւ, ու զանոնք զարկին. և
մինչև մեծ Սիդոնը ու Մասրեփոթ
մայիմը, և մինչև Մասփայի հովիտը
դէպ՚ի արևելք հալածեցին. ու զա-
նոնք զարկին՝ մինչև որ անոնցմէ մէ-
9 կը չազատեցաւ ։ Եւ Յեսու անոնց
այնպէս ըրաւ. ինչպէս որ Տէրը ի-
րեն ըսեր էր. անոնց ձիերուն ջիղե-
րը կտրեց, ու անոնց կառքերը
կրակով այրեց ։
10 Եւ նոյն ատենը Յեսու դարձաւ՝
Հասորը առաւ, ու անոր թագա-
ւորը սրով մեռցուց. քանզի Հա-
սորը առաջուց աս բոլոր թագաւո-
11 րութիւններուն գլուխն էր ։ Եւ ա-
նոր մէջ գտնուած բոլոր հոգիները
սուրի բերնէ անցուցին, ու բնա-
ջինջ ըրին. բնաւ մէկ շնչաւոր մը
չմնաց. ու Հասորը կրակով այ-
12 րեց ։ Ուստի Յեսու աս թագաւոր-
ներուն բոլոր քաղաքները՝ ու ա-
նոնց բոլոր թագաւորները առաւ,
և զանոնք սուրի բերնէ անցընելով՝
բնաջինջ ըրաւ. ինչպէս որ Տէ-
րոջը ծառան Մովսէս պատուիրեր
13 էր ։ Բայց Իսրայէլ չայրեց ան քա-
ղաքները՝ որոնք իրենց հողաբլուր-
ներովը կը կենային. բայց միայն
14 Հասորը՝ որն որ Յեսուն այրեց ։ Եւ
աս քաղաքներուն բոլոր աւարը ու
անասունները՝ Իսրայէլի որդիքը
իրենց առին. բայց բոլոր մարդիկ-
ները սուրի բերնէ անցուցին, մինչև
որ զանոնք բնաջինջ ըրին. ու
բնաւ մէկ շնչաւոր մը չթողուցին ։
15 Ինչպէս որ Տէրը իր Մովսէս ծա-
ռային պատուիրեր էր, անանկ ալ
Մովսէս Յեսուին պատուիրեց, ու
Յեսուն ալ այնպէս ըրաւ. և ինչ
որ Տէրը Մովսէսին պատուիրեր էր,
բնաւ անոնց մէկը զանց չըրաւ ։
16 Ուստի Յեսու ան բոլոր երկիրը
առաւ. լեռնակողմը ու բոլոր
հարաւային կողմը և բոլոր Գո-
սոմի երկիրը՝ հովիտը ու դաշտը՝
և Իսրայէլի լեռը ու անոր հովիտը
17 Սէիր ելլող Քաղակ լեռնէն մինչև
Հերմոն լեռանը տակը Լիբանանու
հովտին մէջը եղող Բաաղգադը՝ և
անոնց բոլոր թագաւորները բռնե-
ց, ու զանոնք զարկաւ մեռցուց ։

թ Գլ. ժ. 8.
ժ Բ Թագ. ը. 4.
ժա Գլ. ժգ. 6.
ժբ Հմր 8.
ժգ Թու. լգ. 52. Բ Օր. է. 2. ի. 16. 17.
ժդ Ել. լդ. 11. 12.
ժե Բ Օր. է. 2.
ժզ Գլ. ա. 7.
ժէ Գլ. ժբ. 8.
ժը Գլ. ժ. 41.
ժթ Գլ. ժբ. 7.
ի Բ Օր. է. 24. Գլ. ժբ. 7.

Ն․ Ք․ ԴՔ․
1450

ժԳլ․ Թ․ 3․ 7։

ի Բ Օր․ Բ․ 30։ Դատ․ ԺԴ 4։ ա Թագ․ Բ․ 25։ Գ Թագ․ ԺԲ․ 15։ Հռովմ․ Թ․ 18։
լ Բ Օր․ Ի․ 16․ 17։
ա Թու․ ԺԳ․ 23․ 34։ Բ Օր․ Ա․ 28։ Գլ․ ԺԵ․ 13․ 14։
կ Ա Թագ․ ԺԷ․ 4։
ղ Գլ․ ԺԵ․ 46։
ճ Թու․ ԼԴ․ 2․ Ե․
մ Թու․ ԻԴ․ 53։ Գլ․ ԺԴ։ ԺԵ։ ԺԶ։ ԺԷ։ ԺԸ։ ԺԹ։
ն Գլ․ ԺԴ․ 15։ Իա․ 44։ ԻԲ․ 4։ ԻԴ․ 1։
1445
Հմր 18։

18 Յեսու ասս բոլոր թագաւորներուն
հետ շատ օրեր պատերազմ ըրաւ ։
19 ժԳաբաւոնի մէջ բնակող Խևացի-
ներէն 'ի զատ՝ Իսրայէլի որդւոցը
հետ հաշտութիւն ընող քաղաք մը
չկար ․ ամէնն ալ պատերազմով
20 առին ․ Քանզի իանոնց սրտին
կարծրանալը՝ ու պատերազմով
Իսրայէլին դէմ գնելնին Տէրոջմէն
եղաւ , որ անոնց ողորմութիւն
չըլլալով՝ զանոնք կորսընցընէ ու
բնաջինջ ընէ , լինչպէս որ Տէրը
Մովսէսին պատուիրեր էր ։
21 Եւ ան ատենը Յեսու գնաց՝ ու
լեռներէն՝ Քեբրոնէն , Դաբիրէն ,
Անաբէն ու Յուդայի բոլոր լեռնե-
րէն , և Իսրայէլի բոլոր լեռներէն
աԵնակիմները կոտրեց ․ Յեսու զա-
նոնք՝ իրենց քաղաքներովը մէկտեղ
22 կորսընցուց ։ Ենակիմներէն Իսրայէլի որ-
դւոցը երկրին մէջ՝ Ենակիմներէն
մէկ չմնաց , բայց միայն Գազայի ,
կԳեթի ու ղԱսեդովթի մէջ մնա-
ցին ։
23 Ու Յեսու բոլոր երկիրը առաւ ,
ճինչպէս որ Տէրը Մովսէսին պա-
տուիրեր էր , և Յեսու զանիկայ Իս-
րայէլին ժառանգութիւն տուաւ ,
մանոնց ցեղերուն բաժիններուն
համեմատ ․ նու երկիրը պատերազ-
մէն հանգստացաւ ։

## ԳԼ․ ԺԲ

1 Ան երկու թագաւորները՝ որոնց երկիրները Մովսէս առաւ ու բաժին ըրաւ ։ 7 Յորդանանու մէկալ դին եղած երսունումէկ թագաւորները՝ որոնք Յեսու զարկաւ ։

1452

ա Թու․ Իա․ 24։
բ Բ Օր․ Գ․ 8․ 9։
գ Թու․ Իա․ 24։ Բ Օր․ Բ․ 33․ 36։ Գ․ 6․ 16։
դ Բ Օր․ Գ․ 17։
ե Գլ․ ԺԳ․ 20։
զ Բ Օր․ Գ․ 17։ Գ․ 49։
է Բ Օր․ Գ․ 11։ Գլ․ ԺԳ․ 12։
ը Թու․ Իա․ 35։ Բ Օր․ Գ․ 4․ 10։
թ Բ Օր․ Ա․ 4։
ժ Բ Օր․ Գ․ 8։
ի Բ Օր․ Գ․ 10։ Գլ․ ԺԳ․ 11։
լ Բ Օր․ Գ․ 14։

1 Ասոնք են ան երկրին թագաւոր-
ները՝ որ Իսրայէլի որդիքը զա-
նոնք զարկին , ու անոնց երկիրները
առին , Յորդանանու անդիի կողմը
դէպ 'ի արևելք , աԱռնոն ձորէն
բմինչև Հերմոն լեռը՝ արևելեան
2 կողմին բոլոր դաշտովը , Եսեբոնի
մէջ բնակող գԱմորհացւոց Սեհոն
թագաւորը , որ անիկայ՝ Առնոն
ձորին եզերքը եղող Արոերէն , և
ձորին մէջտեղէն , ու Գաղաադին
կէսէն մինչև Ամմոնի որդւոցը սահ-
3 մանը եղած Յաբոկ ձորը , Նաև
դ դաշտին , արևելեան կողմէն մին-
չև Քենէրեթի ծովը , ու արևելեան
կողմէն եԲեթեսիմոթի ճամբան ,
ու հարաւային կողմէն զԱսեդովթ
փասգային տակը՝ մինչև դաշտի ծո-
վը՝ այսինքն մինչև Աղի ծովը կը տի-
4 րէր ․ Ու էհսկաներուն մնացորդէն
ըԲասանի Ովգ թագաւորին սահ-
մանը՝ թոր անիկայ Աստարովթի
5 ու Եդրայիի մէջ կը բնակէր , Եւ
կը տիրէր ժՀերմոն լեռանը , իու
Սելքայի և բոլոր Բասանի լմինչև
Գեսուրացւոց ու Մաքաթացւոց

սահմանը , ու մինչև Գաղաադին
կէսը , որ Եսեբոնի Սեհոն թագա-
6 ւորին սահմանն էր ։ խԱսոնք Տէ-
րոջը ծառան Մովսէս Իսրայէլի որ-
դւոցը հետ զարկաւ , ու ծ անոնց եր-
կիրները՝ Տէրոջը ծառան Մովսէս
Ռուբէնեանց , Գադեանց ու Մա-
նասէի կէս ցեղին ժառանգութիւն
տուաւ ։
7 Եւ ասոնք են երկրին թագաւոր-
ները , կոր Յեսու ու Իսրայէլի որ-
դիքը զարկին Յորդանանու ասդիի
կողմը դէպ 'ի արևմուտք , Լիբանա-
նու հովտին մէջը եղող Բաաղգա-
դէն մինչև Քաղակ լեռը , որ հՍէի-
րը կ'ելլէ ․ և Յեսու անոնց երկիրնե-
րը՝ ձԻսրայէլի ցեղերուն ժառան-
գութիւն տուաւ իրենց վիճակնե-
8 րուն համեմատ ․ ղԼեռներուն՝ ու
հովիտներուն՝ ու դաշտերուն մէ-
ջը՝ ու լեռներուն ստորոտները՝ և
անապատը , ու հարաւային կողմը
բնակող ճՔետացիները՝ Ամորհա-
ցիները՝ Քանանացիները՝ Փերե-
զացիները՝ Խևացիները ու Յեբու-
9 սացիները ։ մԵրիքովի թագաւո-
րը մէկ ․ Բեթելի քովը եղող յԳա-
10 յիի թագաւորը մէկ ․ նԵրուսա-
ղեմի թագաւորը մէկ ․ Քեբրոնի
11 թագաւորը մէկ ․ Յերիմութի թա-
գաւորը մէկ ․ Լաքիսի թագաւո-
12 րը մէկ ․ Եգղոնի թագաւորը մէկ ․
13 շԳազերի թագաւորը մէկ ․ ոԴա-
բիրի թագաւորը մէկ ․ Գադերի
14 թագաւորը մէկ ․ Հօրմայի թա-
գաւորը մէկ ․ Արադի թագաւորը
15 մէկ ․ չԼեբնայի թագաւորը մէկ ․
16 Ոդողոմի թագաւորը մէկ ․ պՄակե-
դայի թագաւորը մէկ ․ ջԲեթելի
17 թագաւորը մէկ ․ Թափուայի թա-
գաւորը մէկ ․ ռՈփերի թագաւորը
18 մէկ ․ Ափեկի թագաւորը մէկ ․ Լա-
19 սարոնի թագաւորը մէկ ․ Մադոնի
թագաւորը մէկ ․ սՀասորի թագա-
20 ւորը մէկ ․ վՍամրոն մառօնի թա-
գաւորը մէկ ․ Աքսափի թագաւորը
21 մէկ ․ Թանաքի թագաւորը մէկ ․
22 Մակեդդովի թագաւորը մէկ ․ տԿա-
դեսի թագաւորը մէկ ․ Կարմեղոս
եղած Յեկնամի թագաւորը մէկ ․
23 րԴովրի գաւառին մէջը՝ Դովրի
թագաւորը մէկ ․ ցԳաղգաղային
24 Գոյիմի թագաւորը մէկ ․ Թերսայի
թագաւորը մէկ ․ Այս թագաւորնե-
րուն ամէնը երսունումէկ էին ։

## ԳԼ․ ԺԳ

1 Դեռ չառնուած երկրին սահմանները ։ 8 Երկուք ու կէս ցեղերուն ժառանգութիւնը ։ 14, 33 Տէրը ու իրեն մատուցուած զոհերը Ղևիին ժառանգութիւնը պիտի ըլլային ։ 15 Ռուբէնին ժառանգութեանը սահմանները ։ 22 Բաղաամին մեռցուիլը ։ 24 Գադին , 29 և Մանասէի կէս ցեղին ժառանգութեանը սահմանները ։

Ն․ Ք․ ԴՔ․
1452

խ Թու․ Իա․ 24․ 33։
ծ Թու․ ԼԲ․ 29․ 33։ Բ Օր․ Գ․ 11․ 12։ Գլ․ ԺԳ․ 8։
կ Գլ․ ԺԱ․ 17։
հ Ծն․ ԺԴ․ 6։ ԼԲ․ 3։ Բ Օր․ Բ․ 1․ 4։
ձ Գլ․ ԺԱ․ 23։
ղ Գլ․ Ժ․ 40։ ԺԱ․ 16։
ճ Ել․ Գ․ 8։ ԻԳ․ 23։ Գլ․ Թ․ 1։
1451
մ Գլ․ Զ․ 2։
յ Գլ․ Ը․ 29։
ն Գլ․ Ժ․ 23։
շ Գլ․ Ժ․ 33։
ո Գլ․ Ժ․ 38։
չ Գլ․ Ժ․ 29։
պ Գլ․ Ժ․ 28։
ջ Գլ․ Ը․ 17։ Դատ․ Ա․ 22։
ռ Գ Թագ․ Դ․ 10։
ս Գլ․ ԺԱ․ 10։
1450
վ Գլ․ ԺԱ․ 1։ ԺԹ․ 15։
տ Գլ․ ԺԹ․ 37։
ր Գլ․ ԺԱ․ 2։
ց Ծն․ ԺԴ․ 1․ 2։ Ես․ Թ․ 1։

Ն. Ք. ԺԴ.
1445

[ա] Տես Գլ. ժդ. 10, իգ. 1։
[բ] Դատ. գ. 1։
[գ] Յովէլ. գ. 4։
[դ] Հմր 13։ բ Թագ. գ. 3։ ժգ. 37. 38։
[ե] Երեմ. բ. 18։
[զ] Դատ. գ. 3։ ա Թագ. զ. 4. 16։ Սոփ. բ. 5։
[է] բ Օր. բ. 23։
[ը] Գլ. ժթ. 30։
[թ] Տես Դատ. ա. 34։
[ժ] գ Թագ. ե. 18։ Սաղ. ձգ. 7։ Եզեկ. իէ. 9։
[ժա] Գլ. ժբ. 7։
[ժբ] Գլ. ժա. 8։
[ժգ] Տես Գլ. իգ. 13։ Դատ. բ. 21. 23։
[ժդ] Գլ. ժդ. 1, 2։
[ժե] Թուոց. լբ. 33։ բ Օր. գ. 12. 13։ Գլ. իբ. 4։
[ժզ] Հմր 16։ Թուոց. իա. 30։
[ժէ] Թուոց. իա. 24, 25։
[ժը] Գլ. ժբ. 5։
[ժթ] բ Օր. գ. 11։ Գլ. ժբ. 4։
[ի] Թուոց. իա. 24, 35։
[իա] Հմր 11։
[իբ] Թուոց. ժը. 20, 23, 24։ Գլ. ժգ. 3, 4։

1 Եւ երբոր Յեսու [ա] ծերացաւ ու
տարիքը առաւ, Տէրը անոր ը-
սաւ. Դուն ծերացար ու տարիքդ
առիր. և տակաւին խիստ շատ եր-
2 կիր մնաց ժառանգելու ։ [բ] Մնա-
ցած երկիրը ասիկայ է. [գ] Փղշտա-
ցւոց ամէն սահմանները, ու բոլոր
3 [դ] Գեսուրը, [ե] Եգիպտոսին դիմացը
եղող Սիովրէն՝ մինչև Քանանացւո-
ցը սեպուած Ակկարոնի սահմանին
հիւսիսային կողմը, [զ] Փղշտացւոց
հինգ նախարարութիւնները, այսինքն
Գազացւոց, Ազովտացւոց,
Ասկաղոնացւոց, Գեթացւոց, ու
Ակկարոնացւոց, նաև [է] Աւացւոց
4 [illegible]. Հարաւային կողմէն՝ Քա-
նանացւոց բոլոր երկիրը՝ ու Սիդո-
նացւոց Մէարան, [ը] մինչև Աբեկը՝
ու մինչև [թ] Ամօրհացւոց սահմանը.
5 Եւ [ժ] Գեբաղացւոց երկիրը՝ ու ա-
րևելեան կողմէն բոլոր Լիբանանը,
Հերմոն լեռան տակը եղող [ժա] Բա-
աղգադէն մինչև Եմաթի մուտքը,
6 Բոլոր լեռնաբնակները՝ Լիբանանէն
մինչև [ժբ] Մասրեփօթ մայիմը, բոլոր
Սիդոնացիները. զանոնք [ժգ] Իսրայէլի
որդւոցը առջևէն ես պիտի վռըն-
տեմ. միայն թէ [ժդ] դուն Իսրայէլին
ժառանգութիւն բաժնէ ան [illegible],
ինչպէս որ քեզի պատուիրեցի ։
7 Եւ հիմա աս երկիրը ժառանգու-
թիւն բաժնէ ինը ցեղին, ու Մա-
8 նասէի կէս ցեղին. Քանզի Ռուբէ-
նեանք ու Գադեանք անոր միւս կէ-
սին հետ առին իրենց ժառանգու-
թիւնը, [ժե] որն որ Մովսէս Յորդա-
նանու անդիի կողմը դէպ 'ի արև-
ելք անոնց տուաւ, Տէրոջը ծառա-
յին Մովսէսին տուածին պէս.
9 Առնոն ձորին եզերքին վրայ եղող
Արոերէն՝ ու ձորին մէջը եղող
քաղաքէն՝ [ժզ] Մեդաբայի բոլոր դաշ-
10 տովը՝ մինչև Դեբոնը. Ու Եսեբո-
նի մէջ թագաւորող՝ [ժէ] Ամօրհացւոց
Սեհոն թագաւորին բոլոր քաղաք-
ները՝ մինչև Ամմոնի որդւոցը սահ-
11 մանը. [ժը] Եւ Գաղաադը՝ ու Գեսու-
րացւոց ու Մաքաթացւոց սահմա-
նը՝ և բոլոր Հերմոն լեռը՝ ու բոլոր
12 Բասանը մինչև Սելքա. Բասանի
մէջ Ովգին բոլոր թագաւորութիւ-
նը՝ որ Աստարովթի ու Եդրայիի
մէջ կը թագաւորէր. ան [ժթ] հսկանե-
րուն մնացորդէն անիկայ մնացեր
էր. [ի] բայց Մովսէս զանոնք զարկաւ
13 ու վռընտեց ։ Եւ Իսրայէլի որդիքը
[իա] Գեսուրացիները ու Մաքաթացի-
ները չվռընտեցին. և Գեսուրացի-
ները ու Մաքաթացիները՝ մինչև
այսօր Իսրայէլի մէջ բնակեցան ։
14 [իբ] Միայն Ղևիի ցեղին ժառանգու-
թիւն չտուաւ. անոր ժառանգու-
թիւնը՝ Իսրայէլի Տէր Աստուծոյն
[illegible] պատարագներն են,
[իգ] ինչպէս որ անոր ըսեր էր ։
15 Եւ Մովսէս Ռուբէնի որդւոցը
ցեղին՝ անոնց ազգատոհմներուն
համեմատ ժառանգութիւն տուաւ.
16 Ու անոնց սահմանը այսպէս եղաւ.
[իդ] Առնոն ձորին եզերքին վրայ եղող
Արոերէն՝ ու [իե] ձորին մէջը եղող
17 քաղաքէն, [իզ] Մեդաբայի քովը ե-
ղած բոլոր դաշտը, Եսեբոնը ու ա-
նոր բոլոր դաշտային քաղաքները,
Դեբոնը, Բամօթ բահաղը ու Բեթ-
18 բէէլմօնը, [իէ] Եւ Յասսան, ու Կա-
19 դեմօթը, ու Մեփայաթը, [իը] Եւ
Կարիաթեմը, ու [իթ] Սեբաման, և Սա-
րեթ սահառը *Եմակ լեռան վրայ,
20 Ու Բեթփեգովրը՝ և [լ] Ասեդովթ
21 փասգան՝ ու Բեթեսիմօթը՝ [լա] Եւ
դաշտին ամէն քաղաքները, ու Ե-
սեբոնի մէջ թագաւորող՝ Ամօրհա-
ցւոց Սեհոն թագաւորին բոլոր
թագաւորութիւնը, [լբ] որ զանիկայ
ու [լգ] Մադիամու իշխանները՝ Եւին,
Ռոկոմը, Սուրը, Ուրը ու Ռոբէն,
ան երկրին մէջը բնակող Սեհոնին
նախարարները՝ Մովսէս զարկաւ ։
22 Եւ Իսրայէլի որդիքը՝ [լդ] Բէովրեան
Բաղաամ հարցուկն ալ սրով մեռ-
ցուցին [illegible] սպաննուածներուն
23 հետ ։ Ու Ռուբէնի որդւոցը սահ-
մանը՝ Յորդանանը և անոր սահմանը
եղաւ. Ռուբէնի որդւոցը ազգա-
տոհմներուն ժառանգութիւնը ա-
սիկայ է, այն քաղաքները ու անոնց
գեղերը ։
24 Եւ Մովսէս Գադի ցեղին՝ Գադի
որդւոցը՝ իրենց ազգատոհմներուն
համեմատ ժառանգութիւն տուաւ ։
25 [լե] Ու անոնց սահմանը այսպէս եղաւ.
Յազերը ու բոլոր Գաղաադի քա-
ղաքները, [լզ] և Ամմոնի որդւոցը երկ-
րին կէսը՝ մինչև Արոէրը, որ [լէ] Ռաբ-
26 բային դիմացն է ։ Ու Եսեբոնէն
մինչև Մասփայի Ռամովթը՝ ու Բո-
տանիմը, և Մանայիմէն մինչև Դա-
27 բիրի սահմանը ։ Ու հովիտի մէջ՝
[լը] Բեթարամը ու Բեթնամրան,
[լթ] Սոկքովթը ու Սափոնը՝ Եսեբոնի
Սեհոն թագաւորին թագաւորու-
թեանը մնացորդը, Յորդանանը ու
անոր սահմանը, մինչև [խ] Քեններեթի
ծովուն եզերքը՝ Յորդանանու ան-
28 դիի կողմը դէպ 'ի արևելք ։ Գա-
դի որդւոցը ժառանգութիւնը ի-
րենց ազգատոհմներուն համեմատ
ասիկայ է, այն քաղաքները ու ա-
նոնց գեղերը ։
29 Եւ Մովսէս՝ Մանասէի կէս ցեղին
ալ ժառանգութիւն տուաւ, որ Մա-
նասէի որդւոցը կէս ցեղին եղաւ՝
իրենց ազգատոհմներուն համեմատ ։
30 Ու անոնց սահմանը այսպէս եղաւ.
Մանայիմէն՝ Բասանի Ովգ թագա-

Ն. Ք. ԺԴ.
1445

[իդ] Հմր 33։
[իե] Գլ. ժբ. 2։
[իզ] Թուոց. իա. 28։
[իէ] Թուոց. իա. 30։ Հմր 9։
[իը] Թուոց. իա. 23։
[իթ] Թուոց. լբ. 37։
[լ] Թուոց. լբ. 38։
* Կամ՝ Հովիտի
[լա] բ Օր. գ. 17։ Գլ. ժբ. 8։
[լբ] բ Օր. գ. 10։
[լգ] Թուոց. իա. 24։
[լդ] Թուոց. լա. 8։
[լե] Թուոց. իբ. 5։ լա. 8։
[լզ] Թուոց. լբ. 35։
[լէ] Բաղդատէ՛ Թուոց. իա. 26, 28, 29։ բ Օր. բ. 19։ և Դատ. ժա. 13, 15, ...։
[լը] բ Թագ. ժա. 1։ ժբ. 26։
[լթ] Թուոց. լբ. 36։
[խ] Ծն. լգ. 17։ գ Թագ. է. 46։
[խա] Թուոց. լգ. 11։

Ն. Ք. ԳՔ.
1445

գ Թու. ԼԲ. 41. ա Մն. Բ. 23.
դ Գլ. ԺԲ. 4.

ե Թու. ԼԲ. 39. 40.

զ Հմր 14. Գլ. ԺԲ. 7.
է Թու. ԺԸ. 20. բ Օր. Ժ. 9. ԺԸ. 1. 2.

իբր 1444

ա Թու. ԼԴ. 17. 18.

բ Թու. ԻԶ. 55. ԼԳ. 54. ԼԴ. 13.

գ Գլ. ԺԳ. 8. 32. 33.

դ Ծն. ԽԸ. 5. ա Մն. Ե. 1. 2.

ե Թու. ԼԵ. 2. Գլ. ԻԱ. 2.

զ Թու. ԼԲ. 12. Գլ. ԺԵ. 17.
է Թու. ԺԴ. 24. 30. Բ Օր. Ա. 36. 38.
ը Թու. ԺԳ. 27.
թ Թու. ԺԳ. 7. ԺԴ. 6.

ւորին բոլոր թագաւորութիւնը՝
բոլոր Բասանը, ու Բասանի մէջ
եղող գՅայիրի բոլոր գիւղաքաղաք-
31 ները՝ վաթսուն քաղաք. Ու Գա-
ղաադին կէսը՝ և դԱստարովթը ու
Եդրային, Բասանի մէջ Ովգին
թագաւորութեանը քաղաքները
Մանասէեան Մաքիրին որդւոցը ե-
ղաւ, այսինքն եՄաքիրի որդւոցը
կէսին՝ իրենց ազգատոհմերուն հա-
մեմատ ։
32 Ասոնք են ան բաժինները, որ
Մովսէս՝ Մովաբի դաշտերուն մէջ՝
Երիքովի դիմացը Յորդանանու ան-
դիի կողմը դէպ 'ի արեւելք ժառան-
33 գութիւն տուաւ ։ զԲայց Մովսէս
Ղեւիի ցեղին ժառանգութիւն չը-
տուաւ. անոնց ժառանգութիւնը՝
Իսրայէլին Տէր Աստուածն է, էինչ-
պէս որ անոնց ըսաւ ։

ԳԼ. ԺԴ

1 Ինն ու կէս ցեղերը իրենց ժառանգութիւնը վիճակով պիտի առնէին ։ 6 Քաղէբ յատուկ կերպով մը իրեն ժառանգութիւն կը ստանայ Քեբրոնը ։

1 Ու Քանանու երկրին մէջ՝ Իսրայէ-
լի որդւոցը ժառանգած տեղերը
ասոնք են, աոր Եղիազար քահա-
նան, և Նաւեան Յեսուն, ու Իս-
րայէլի որդւոցը ցեղերուն նահա-
պետութեան իշխանները ժառան-
2 գեցուցին անոնց ։ բԻնն ու կէս
ցեղերուն վիճակով տրուեցաւ՝ ա-
նոնց ժառանգութիւնը, ինչպէս
որ Տէրը Մովսէսին ձեռքովը հրա-
3 մայեր էր ։ գՔանզի Մովսէս եր-
կուք ու կէս ցեղերուն՝ Յորդանա-
նու անդիի կողմը ժառանգութիւն
տուեր էր, բայց անոնց մէջը՝
Ղեւտացիներուն ժառանգութիւն
4 տուած չէր. Որովհետև դՅովսէփի
որդիքը երկու ցեղ էին, Մանասէ
ու Եփրեմ. ու երկրին մէջը Ղե-
ւտացւոց բաժին չտուին, բայց միայն
քաղաքներ՝ բնակելու համար, ու
արուարձաններն ալ՝ անոնց խա-
շանցը և ստացուածոցը համար ։
5 եԻնչպէս որ Տէրը Մովսէսին պա-
տուիրեր էր, Իսրայէլի որդիքը
այնպէս ըրին, ու երկիրը բաժնե-
ցին ։
6 Ու Յուդայի որդիքը Գաղգա-
ղայի մէջ Յեսուին մօտեցան, ու
զԿենեզեան Յեփոնէին որդին Քա-
ղէբը անոր ըսաւ. Դուն գիտես
էան խօսքը՝ որն որ Տէրը ըԿադէս
բառնեայի մէջ Աստուծոյ մարդուն
Մովսէսին հետ խօսեցաւ՝ ինծի ու
7 քեզի համար ։ Երբոր Տէրոջը ծա-
ռան Մովսէս զիս թԿադէս բառնեա-
յէն խրկեց երկիրը լրտեսելու համար,
ես քառասուն տարեկան էի. ու
սրտիս մէջը եղածին պէս անոր լուր
8 բերի. Սակայն ժիմ հետս ելող եղ-
բայրներս ժողովուրդին սիրտը
թուլցուցին. բայց ես *իմ բոլոր
սրտովս էիմ Տէր Աստուծոյս հնա-
9 զանդեցայ" ։ Ու նոյն օրը Մովսէս
երդում ըրաւ՝ ըսելով. լԱն քու
ոտքիդ կոխած երկիրը՝ էանպատ-
ճառ քեզի ու քու որդւոցդ՝ յաւի-
տեան ժառանգութիւն պիտի ըլ-
լայ. որովհետև իմ Տէր Աստու-
ծոյս քու բոլոր սրտովդ հնազան-
10 դութիւն ըրիր ։ Արդ՝ ահա Տէրը
ծիր ըսածին պէս՝ աս քառասուն-
ուհինգ տարին իմ կեանքս պա-
հեց, ան ժամանակէն 'ի վեր՝ որ
Տէրը աս խօսքը Մովսէսին ըսաւ,
քանի որ Իսրայէլը անապատին մէջ
կը պտըտէր. և ահա ես այսօր
ութսունուհինգ տարեկան եմ.
11 կԵս այսօր տակաւին ուժով եմ,
ինչպէս որ էի Մովսէսին զիս
խրկած օրը. ան ատենի զօրու-
թիւնս ինչոր էր, հիմակուան զօ-
րութիւնս ալ անանկ է, պատե-
րազմելու, և հելլելու ու մտնելու
12 կողմանէ ։ Ուստի հիմա ինծի
տուր ան լեռը, որուն համար Տէրը
ան օրը խօսեցաւ. քանզի դուն ան
օրը լսեցիր որ յԵնակիմները հոն կը
բնակին, ու մեծ պարսպաւոր քա-
ղաքներ ունին. ւԳուցէ Տէրը իմ
հետս ըլլայ, ու զես զանոնք վռըն-
13 տեմ, ինչպէս որ Տէրը ըսաւ ։ Ու
Յեսու ճզանիկայ օրհնեց, ու Յե-
փոնեան Քաղէբին՝ Քեբրոնը ժա-
14 ռանգութիւն տուաւ ։ ՆԱսոր
համար Քեբրոնը՝ Կենեզեան Յե-
փոնէի որդւոյն Քաղէբին ժառան-
գութիւնը եղաւ մինչև այսօր, ո-
րովհետև ւԻսրայէլի Տէր Աստու-
ծոյն բոլոր սրտով հնազանդութիւն
15 ըրաւ ։ Ու ոՔեբրոնին անունը՝
առաջուց †Կարիաթ արբա էր. ան
ան Արբան՝ Ենակիմներուն մէջ մեծ
մարդ մըն էր ։
ւՈւ երկիրը պատերազմէն հան-
գըստացաւ ։

ԳԼ. ԺԵ

1 Յուդայի վիճակին սահմանները ։ 13 Քաղէբին բաժինը, ու ըրած յաղթութիւնը ։ 16 Գոթոնիէլ՝ իր քաջութեանը համար՝ Քաղէբին աղջիկը Աքսան իրեն կնիկ կ'առնէ. 18 ան ալ իր հօրմէն օրհնութիւն մը կը խնդրէ, ու կը ստանայ ։ 21 Յուդային քաղաքները ։ 63 Յեբուսացիները չվռընտուեցան ։

1 Ու Յուդայի որդւոցը ցեղին վի-
ճակը իրենց տոհմերուն համե-
մատ՝ ամինչև Եդովմայեցւոց սահ-
մանը կը հասնէր. հարաւային
կողմէն բՍին անապատը անոնց հա-
րաւային ծայրն էր ։
2 Ու անոնց հարաւային սահմանը
ան եղաւ. Աղի ծովուն ծայրէն՝

Ն. Ք. ԳՔ.
իբր 1444

ժ Թու. ԺԳ. 32. 33. բ Օր. Ա. 28.
* Եբր. իմ Տէր Աստուծոյս ետեւէն լեցուցի.
է Թու. ԺԴ. 24. բ Օր. Ա. 36.
Լ Տես Թու. ԺԴ. 23.
ի Թու. ԺԴ. 23. 24. բ Օր. Ա. 36. Գլ. Ա. 3.
ծ Թու. ԺԴ. 30.

1444

կ Տես բ Օր. ԼԴ. 7.

հ Բ Օր. Լա. 2.
յ Թու. ԺԳ. 29. 34.
ւ Սաղ. ԺԸ. 32. 34. Կ. 12. Հռով. Ը. 31.
ճ Գլ. ԺԵ. 14. Դատ. Ա. 20.
ճ Գլ. ԻԲ. 6.
յ Գլ. Ժ. 37. ԺԵ. 13. Դատ. Ա. 20. Տես Գլ. ԻԱ. 11. 12. ա Մն. Զ. 55. 56.
ն Գլ. ԻԱ. 12.
ւ Հմր 8. 9.
ո Ծն. ԻԳ. 2. Գլ. ԺԵ. 13.
† Այ՝ Արբայի քաղաքը.
ւ Գլ. ԺԱ. 23.

ա Թու. ԼԴ. 3.
բ Թու. ԼԳ. 36.

Ն · Ք · գԺ · 1444

այսինքն հարաւակողմը նայող ծո-
3 ցէն սկսաւ . Ու հարաւային կող-
մէն՝ ԳԱկրաբիմի զառ 'ի վերը ել-
լելով՝ Սինը կ'անցնի . ու հարաւա-
յին կողմէն Կադէս բառնեայ ել-
լելով՝ Եսրոնը կ'անցնի . ետքը
դէպ 'ի Ադդարը ելլելով՝ Կարկային

ԳԹուոց · լդ · 4 ·

4 բոլորտիքը կը պտըտի . Ետքը ԴԱ-
սեմոնէն անցնելով՝ Եգիպտոսի հե-
ղեղատը կ'ելլէ , ու այն սահմանը
ծովուն մէջ կը վերջանայ . Ձեր
հարաւային սահմանը աս է ։

ԴԹուոց · լդ · 5 ·

5 Եւ արեւելեան սահմանը՝ Աղի
ծովն է , մինչեւ Յորդանանու ծայ-
րը ։
Ու հիւսիսային կողմի սահմանը՝
Յորդանանու ծայրը եղող ծոցէն կը
6 սկսի . Եւ այն սահմանը մինչեւ ԵԲե-
թաղղա կը հասնի . ու Բեթարա-
բային հիւսիսային կողմէն կը պտը-
տի . և այն սահմանը մինչեւ ՁՌու-
7 բենեան Բաանին վէմը կ'ելլէ . Ետ-
քը այն սահմանը՝ ԷԱքովրի ձորէն
Դաբիրը կ'ելլէ , ու հիւսիսային կող-
մէն Գաղգաղա կը դառնայ , որ ան
ձորին հարաւակողմը եղող Ադոմմի-
նի զառ 'ի վերին դիմացն է . և այն
սահմանը Ենսամիւսի ջուրէն կ'անց-
նի . ու ԸՌովգելի աղբիւրը կը վեր-
8 ջանայ . Եւ այն սահմանը ՐԵնովմի
որդւոյն ձորը՝ հարաւային կողմէն
ԺՅեբուսին այսինքն Երուսաղէմին
քովը կ'ելլէ . ետքը այն սահմանը
մինչեւ ան լեռանը գլուխը կ'ելլէ ,
որ արեւմտեան կողմէն Ենովմի ձո-
րին դիմացն է , ու հիւսիսային կող-
մէն՝ ԻՌափայնոց ձորին ծայրն է .
9 Եւ այն սահմանը լեռանը գլխէն՝
մինչեւ ԼՆափթովայի ջուրին աղ-
բիւրը կը հասնի , ու Եփրոն լեռանը
քաղաքները կ'ելլէ . ետքը այն սահ-
մանը ԽՄինչեւ Բաաղա այսինքն
10 ԾԿարիաթարիմը կը հասնի . Եւ այն
սահմանը՝ Բաաղայէն դէպ 'ի արեւ-
մուտք Սէիր լեռը կը պտըտի ,
ու հիւսիսային կողմէն Յարիմ լե-
ռանը քովէն կ'անցնի , որ անիկայ
Քեսաղոն է . անկէ Բեթսամիւս
11 կ'իջնէ , ու Կթամնա կ'անցնի . Եւ
այն սահմանը ՀԱկկարոնի քովը
կ'ելլէ դէպ 'ի հիւսիս , ու այն սահ-
մանը Սաքարոնը հասնելով՝ Բաա-
ղա լեռնէն կ'անցնի , ու Յաբնէլը
կ'ելլէ . և այն սահմանը ծովուն մէջ
կը վերջանայ ։
12 Եւ արեւմտեան սահմանը՝ ՁՄԾ
ծովուն եզերքն է . Յուդայի որ-
դւոցը սահմանը չորքնակի իրենց
տոհմերուն համեմատ ասիկայ է ։
13 ՂԵւ Յեփոննեան Քաղեբին Յու-
դայի որդւոցը մէջ ՃԵնակի հօրը
Արբային քաղաքը՝ այսինքն Քեբրո-
նը բաժին տուաւ , ինչպէս որ Տէրը
14 Յեսուին հրամայեր էր ։ Եւ Քա-
ղէբ անկէ ՄԵնակին իրեք որդինե-
րը՝ ՅՍէսին ու Աքիմանը և Թոլմին
15 Ենակին որդիքը վռընտեց . Եւ
Նանկէ Դաբիրի բնակչացը վրայ
գնաց . (ու Դաբիրին անունը ա-
16 ռաջուց Կարիաթ սեփեր էր .) ՇԵւ
Քաղէբ ըսաւ . Ով որ Կարիաթ
սեփերը զարնէ ու առնէ , իմ Աքսա
աղջիկս անոր կնութեան պիտի
17 տամ ։ Եւ Քաղէբին եղբօրը ՈԿե-
նեզին որդին ՉԳոթոնիէլը առաւ
զանիկայ . ու Քաղէբ իր Աքսա
աղջիկը անոր կնութեան տուաւ ։
18 ՊՈւ երբոր անոր կ'երթար , զանի-
կայ յորդորեց որ իր հօրմէն մէկ ա-
գարակ մը ուզէ . և էշուն վրա-
յէն վար իջաւ . ու Քաղէբ անոր
19 ըսաւ . Ի՞նչ եղաւ քեզի . Եւ աղ-
ջիկը ըսաւ . Ինծի Ռօրհնութիւն
տուր . որովհետեւ ինծի հարաւային
երկիր մը տուիր , ինծի *ջուրի
աղբիւրներ" ալ տուր . ուստի ա-
նոր՝ վերի աղբիւրները ու վարի
աղբիւրները տուաւ ։
20 Յուդայի որդւոցը ցեղին ժա-
ռանգութիւնը՝ իրենց տոհմերուն
համեմատ ասիկայ է .
21 Ու Եդովմի սահմանին քովը՝ հա-
րաւային կողմը՝ Յուդայի որդւոցը
ցեղին վերջին քաղաքները ասոնք
են . Կաբսէէլ , Եդեր , Յագուր ,
22 Կինա , Դէմոնա , Ադադա ,
23 Կադէս , Հասոր , Յեթնան ,
24 Զիփ , Տէլէմ , Բաալօթ ,
25 Հասոր ադաթա , †Կարիօթ , Ես-
26 րոն" որ է Հասոր . Ամամ , Սամա ,
27 Մօլադա . Ասեր գադդա , Եսեմոն ,
28 Բեթփաղէտ . Ասեր սուաղ , Բեր-
29 սաբէէ , Բազիօթիա , Բաաղա ,
30 Իյիմ , Ասէմ , Ելթուղադ , Քէ-
31 սիլ , Հօրմա , ՍՍիկելակ , Մադ-
32 մաննա , Սանսաննա , Լաբաովթ ,
Սէլէմ , Ային , ու Ռեմոն . ամէնը
քսանուինը քաղաք է , ու անոնց
գեղերը ։
33 Դաշտավայրի մէջ՝ ԼԵսթաւուղ ,
34 Սարաա , Ասնա , Զանով , Են-
գանիմ , Թափուա , Ենայիմ ,
35 Յերիմութ , Ոդողոմ , Սոքով , Ա-
36 զեկա , Սագարիմ , Ատիթայիմ ,
և Գադերա , ( ու Գադերոթա-
յիմ .) տասնուչորս քաղաք ու ա-
37 նոնց գեղերը ։ Սէննան , Ադասա ,
38 Մագդալգադ , Դաղաան , Մաս-
39 փա , ՏՅեկթոէլ , Լաքիս , Բաղ-
40 կաթ , Եգղոն , Քաբբոն , Լամաս ,
41 Քիթլիս Գադերօթ , Բեթդագոն ,
Նաամա , ու Մակեդա . տասն-
ուվեց քաղաք և անոնց գեղերը ։
42 Լեբնա Եթեր , Ասան , (43) Յեփ-
44 թա Ասնա , Նեսիբ , Կէի-
լա , Աքզիբ , և Մարեսա . ինը

Margin notes (left): Ն · Ք · գԺ · 1444; ԳԹուոց · լդ · 4; ԴԹուոց · լդ · 5; ԵԳլ · ժը · 19; ՁԳլ · ժը · 17; ԷԳլ · է · 26; ԸԲ Թագ · ժէ 17 · Գ Թագ · ա · 9; ԹԳլ · ժը · 16 · Դ Թագ · իգ 10 · Երեմ · ժթ · 2 · 6; ԺԳլ · ժը · 28 · Դատ · ա · 21 · ժթ · 10; ԻԳլ · ժը · 16; ԼԳլ · ժը · 15; ԽԱՄն · ժգ · 6; ԾԴատ · ժը · 12; ԿԾն · լը · 13 · Դատ · ժդ · 1; ՀԳլ · ժթ · 43; ՁԹւ · 47 · Թուոց · լդ · 6 · 7; ՂԳլ · ժդ · 13; ՃԳլ · ժդ · 15.

Margin notes (right): Ն · Ք · գԺ · 1444; ՄԴատ · ա · 10 · 20; ՅԹուոց · ժգ · 23; ՆԳլ · ժ · 38; Դատ · ա · 11; ՇԴատ · ա · 12; ՈԹուոց · լբ · 12 · Գլ · ժդ · 6; ՉԴատ · ա · 13 · գ · 9; ՊԴատ · ա · 14; ՋՏեա Ծն · իդ · 64 · ա Թագ · իե · 23; ՌԾն · լգ · 11; * Կամ՝ ջրակոյտներ; † Կամ՝ Կարիօթ Եսրոն՝; ՍԱ Թագ · իէ · 6; ՎԹուոց · ժգ · 24; ՏԴ Թագ · ժդ · 7.

Ն. Ք. 1444

45 քաղաք ու անոնց գեղերը ։ Ակ-
կարոն՝ իր գիւղաքաղաքներովը ու
46 գեղերովը . Ակկարոնէն մինչև ծովը,
Ասեդոթին քովի բոլոր քաղաք-
47 ները՝ իրենց գեղերովը . Ասեդոթ՝
իր գիւղաքաղաքներովը ու գեղերո-
վը . Գազա՝ իր գիւղաքաղաքներո-
Հմր 4. Թու. ԼԴ. 6.
վը ու գեղերովը , մինչև Եգիպտոսի
հեղեղատը ու մինչև մեծ ծովը՝ իր
սահմաններովը ։
48 Եւ լեռնավայրի վրայ՝ Սամիր ,
49 Յաթիր , Սոքով , Դաննա , Կարի-
50 աթ սաննա՝ այսինքն Դաբիր , Ա-
Գլ. Ժ. 41. ԺԱ. 16.
51 նաբ , Եսթեմով , Անիմ , Գո-
սոմ , Քողոն , ու Գեղոն . տասն-
ումէկ քաղաք ու անոնց գեղերը ։
52 Երեբ , Դուման , Եսան , (53) Յա-
նում , Բեթթափուա , Ափեկա ,
Գլ. ԺԴ. 15. Հմր 13.
54 Քամմատա , Կարիաթ արբա՝ այս-
ինքն Քեբրոն , ու Սիովը . ինը
55 քաղաք և անոնց գեղերը ։ Մաոն ,
56 Կարմեղոս , Զիփ , Յետտա , Յեզ-
57 րայէլ , Յեկդաամ , Զանով , Կա-
յին , Գաբաա , ու Թամնա . տասը
58 քաղաք ու անոնց գեղերը ։ Աղուղ ,
59 Բեթսուր , Գեդովը , Մաարաթ ,
Բեթանովթ , ու Ելթեկոն . վեց
Գլ. ԺԸ. 14.
60 քաղաք՝ ու անոնց գեղերը ։ Կա-
րիաթ բաաղ՝ այսինքն Կարիաթա-
րիմ ու Ռաբբա . երկու քաղաք ու
անոնց գեղերը ։
61 Անապատին մէջ՝ Բեթարաբա ,
62 Մադդին , Սեքաքա , Նեբսան , Աղի
քաղաքը , ու Ենգադդի . վեց քա-
ղաք ու անոնց գեղերը ։
Տես Դատ. Ա. 8. 21. Բ Թագ. Ե. 6. Դատ. Ա. 21.
63 Բայց Յուդայի որդիքը կարող
չեղան Երուսաղէմի մէջ բնակող
Յեբուսացիները վռնտելու . հա-
պա Յեբուսացիները Յուդայի որ-
դւոցը հետ Երուսաղէմի մէջ կը
բնակին մինչև այսօր ։

## ԳԼ. ԺԶ

1 Ընդհանրապէս Յովսեփի որդւոցը սահմանները ։ 5 Եփրեմին ժառանգութեանը սահմանը ։ 10 Չվռնտուած Քանանացիները ։

1 Ու Յովսեփի որդւոցը վիճակը
ասանկ ելաւ . անոնց սահմանը՝
Երիքովին դիմացը Յորդանանէն՝
Երիքովի ջուրին արևելեան կողմէն
ան անապատը կ'երթայ , որ Երի-
քովէն՝ լեռնակողմը՝ Բեթէլը կ'ե-
Գլ. ԺԸ. 13. Դատ. Ա. 26.
2 լէ , Ու Բեթէլէն Լուզը կ'ելլէ , և
Արքի Ատարօթի սահմանէն կ'անց-
3 նի , Ու արևմտեան կողմէն՝ Յեփաղ-
Գլ. ԺԸ. 13. Բ Մն. Ը. 5.
թիի սահմանը կ'իջնէ , մինչև վա-
րի Բեթորոնին սահմանը՝ ու մինչև
Ա Մն. Է. 28. Գ Թագ. Թ. 15.
Գազերը , և ծովուն մէջ կը վեր-
4 ջանայ ։ Եւ Յովսեփին որդիքը՝
Գլ. ԺԵ. 14.
Մանասէն ու Եփրեմը՝ ժառանգու-
թիւն առին ։
5 Ու Եփրեմի որդւոցը սահմանը՝
իրենց տոհմերուն համեմատ այս ե-
ղաւ . այսինքն՝ անոնց ժառանգու-
թեան սահմանը՝ արևելեան կողմէն
Գլ. ԺԸ. 13.
Ատարօթ ադդարը եղաւ , մինչև
6 վերի Բեթորոնը . Եւ այս սահմանը
Բ Մն. Ը. 5.
հիւսիսային կողմէն դէպ 'ի Մաք-
մեթաթը ծովը կ'ելլէ , ու այս սահ-
Գլ. ԺԵ. 7.
մանը արևելեան կողմէն մինչև Թէ-
անթսելովը կը պտըտի , ու ան-
կէ արևելեան կողմէն Յանովէն կը
7 մտնէ , Եւ Յանովէէն Ատարովթը
ու Նաարան կ'իջնէ , ու Երիքովին
Ա Մն. Է. 28.
քովէն անցնելով՝ Յորդանանը կ'ել-
8 լէ . Եւ այս սահմանը Թափուայէն
Կանա հեղեղատը կ'երթայ արև-
Գլ. ԺԵ. 9.
մտեան կողմէն , ու ծովուն մէջ կը
վերջանայ ։ Եփրեմի որդւոցը ցե-
ղին ժառանգութիւնը՝ իրենց տոհ-
9 մերուն համեմատ ասիկայ է ։ Նաև
Գլ. ԺԵ. 9.
Եփրեմի որդւոցը համար զատուած
քաղաքները՝ Մանասէի որդւոցը
ժառանգութեանը մէջ է , բոլոր
քաղաքները իրենց գեղերովը ։
10 Եւ անոնք՝ Գազերի մէջ բնակող
Դատ. Ա. 29. Տես Գ Թագ. Թ. 16.
Քանանացիները չվռնտեցին . ու
Քանանացիները մինչև այսօր Եփ-
րեմի մէջ բնակելով՝ հարկատու
ծառաներ եղան ։

## ԳԼ. ԺԷ

1 Մանասէին վիճակը ։ 8 Անոր սահմանը ։ 12 Չվռնտուած Քանանացիները ։ 14 Յովսեփի որդիքը ուրիշ վիճակ մըն ալ ձեռք կը բերեն ։

1 Ու ասիկայ եղաւ Մանասէի ցեղին
Ծն. ԽԱ. 51. ԽԶ. 20. ԽԸ. 18.
վիճակը . քանզի անիկայ Յով-
սեփին անդրանիկն էր . Մանասէին
Ծն. Ծ. 23.
անդրանիկը Մաքիր՝ Գաղաադին
Թու. ԻԶ. 29. ԼԲ. 39. 40. Ա Մն. Է. 14.
հայրը՝ պատերազմող մարդ մը ըլ-
լալուն համար , Գաղաադը ու Բա-
2 սանը անորը եղաւ . Եւ Մանա-
սէին միւս որդիքն ալ՝ Աբիեզերին
Բ Օր. Գ. 15.
որդիքը , Քեղեքին որդիքը , Աս-
րիելին որդիքը , Սիւքեմին որդի-
Թու. ԻԶ. 29—32.
քը , Ոփերին որդիքը , ու Սեմի-
դային որդիքը՝ իրենց տոհմերուն
Թու. ԻԶ. 30. Ա Մն. Է. 18.
համեմատ ժառանգութիւն ունեցան .
Յովսեփեան Մանասէին արու զա-
Թու. ԻԶ. 31.
ւակները իրենց տոհմերուն համե-
3 մատ՝ ասոնք էին ։ Եւ Մանասէի որ-
Թու. ԻԶ. 32.
դւոյն Մաքիրի որդւոյն Գաղաադի
որդւոյն Ոփերին որդին Սալպաադը
Թու. ԻԶ. 33. ԼԷ. 1. ԼԶ. 2.
տղաքներ չունէր , բայց միայն աղ-
ջիկներ , ու անոր աղջիկներուն ա-
նունները ասոնք են . Մաալա ,
Նուա , Եգղա , Մեղքա ու Թերսա ։
4 Ասոնք՝ Եղիազար քահանային
Գլ. ԺԴ. 1.
առջևը , Նաւեան Յեսուին առ-
ջևը , ու իշխաններուն առջևը ներ-
կայանալով՝ ըսին . Տէրը Մովսէ-
Թու. ԻԷ. 6, 7.
սին հրամայեց որ մեր եղբարցը մէջ
մեզի ժառանգութիւն տրուի ։ Եւ
Յեսու Տէրոջը հրամանաւը՝ անոնց
հօրը եղբարցը մէջ՝ անոնց ժառան-
5 գութիւն տուաւ ։ Եւ Մանասէին՝

Ն. ք. գՔ. 1444

Յորդանանու անդին կողմը եղող
Գաղաադի ու Բասանի երկրէն 'ի
6 զատ՝ տասը բաժին ինկաւ . քանզի
Մանասէին աղջիկները անոր տղոցը
մէջ ժառանգութիւն առին . ու
Գաղաադու երկիրը՝ Մանասէին
միւս որդւոցը եղաւ ։
7 Եւ Մանասէին սահմանը այսպէս
եղաւ . *Ասերէն՝ մինչև էՄաքմե-
թաթը՝ , որ Սիւքեմի դիմացն է ,
ու այն սահմանը աջ կողմը դառնա-
լով՝ մինչև Թափուայի աղբիւրին
քովը բնակողներուն կը հասնի ։
8 Թափուայի երկիրը Մանասէին ե-
ղաւ . ու Մանասէի սահմանին մէ-
ջը եղող ւԹափուա քաղաքը՝ Եփրե-
9 մին որդւոցը եղաւ ։ Եւ այն սահ-
մանը՝ եԿանայ հեղեղատը կ'իջնէ ,
հեղեղատին հարաւային կողմն ։
ըՄանասէի քաղաքներուն մէջը ա-
սոնք Եփրեմին քաղաքներն են . և
Մանասէին սահմանը՝ հեղեղատին
հիւսիսային կողմն է , ու ծովուն
10 մէջ կը վերջանայ ։ Հարաւային կող-
մը՝ Եփրեմին , ու հիւսիսային կող-
մը՝ Մանասէին ըլլալով , անոնց
սահմանը ծովը եղաւ . և հիւսիսա-
յին կողմն՝ Ասերին , ու արևե-
լեան կողմն՝ Իսաքարին հետ կը
11 միանան ։ Եւ Իսաքարին ու Ասե-
րին սահմաններուն մէջը լԲեթսա-
նը ու անոր գիւղաքաղաքները , և
Յեբղաամը ու անոր գիւղաքաղաք-
ները . և Դովրին բնակիչները , ու
անոր գիւղաքաղաքները , ու Են-
դովրին բնակիչները , ու անոր գիւ-
ղաքաղաքները , և Թանաքին բնա-
կիչները , ու անոր գիւղաքաղաքնե-
րը , Մակեդդովի բնակիչները , ու
անոր գիւղաքաղաքները , աս իրեք
12 գաւառը հՄանասէին եղաւ ։ Եւ
ձՄանասէին որդիքը չկրցան աս
քաղաքներուն բնակիչները դուրս
վռընտել . ու Քանանացիները կա-
մակորութեամբ ան երկրին մէջ
13 բնակեցան ։ Ու Իսրայէլի որդիքը
երբոր ուժովցան , ղհարկատու ը-
րին Քանանացիները . բայց զա-
նոնք չվռընտեցին ։
14 ճԵւ Յովսեփի որդիքը Յեսուին
հետ խօսեցան , ու ըսին . Ինչու
համար ինծի միայն մմէկ վիճակ մը
ու մէկ բաժին մը ժառանգութիւն
տուիր , ու ես յբազմաթիւ ժողո-
վուրդ մըն եմ . քանզի Աստուած
15 մինչև հիմա զիս օրհնեց ։ Եւ Յե-
սու անոնց ըսաւ . Թէ որ դուն
բազմաթիւ ժողովուրդ ես , անտա-
ռը ելիր , ու զանիկայ կտրէ , ն
Փերեզացւոց ու Ռափայնոց երկ-
րին մէջը քեզի տեղ ըրէ , որովհետև
Եփրեմի լեռը քեզի նեղ կու գայ ։
16 Եւ Յովսեփի որդիքը ըսին . Լեռը

*Կամ՝ Ասեր Մաքմեթաթէն՝
է Գլ. ժզ. 6.
ւ Գլ. ժզ. 8.
ե Գլ. ժզ. 8.
ը Գլ. ժզ. 9.
լ Ա Թագ. լա. 10. Գ Թագ. դ. 12.
հ Ա Մն. է. 29.
ձ Դատ. ա. 27, 28.
ղ Գլ. ժզ. 10.
ճ Գլ. ժզ. 4.
մ Ծն. խը. 22.
յ Ծն. խը. 19. Թու. իզ. 34, 37.
ն Ծն. ժդ. 5. ժե. 20.

մեզի բաւական չէ . ու հովիտի
երկրին մէջը՝ Բեթսանի մէջ , ու
անոր գիւղաքաղաքներուն մէջ , և
ւՅեզրայէլի հովիտին մէջ բնակող
բոլոր Քանանացիները աերկաթէ
17 կառքեր ունին ։ Ու Յեսու Յով-
սեփին տանը՝ այսինքն Եփրեմին ու
Մանասէին հետ խօսելով , ըսաւ .
Դուն բազմաթիւ ժողովուրդ ես ,
ու շատ ուժ ունիս . քեզի միայն
18 մէկ վիճակ մը չըլլայ , Լեռը քուկդ
ըլլայ . և որովհետև անիկայ ան-
տառ է , զանիկայ կտրէ , ու մինչև
ծայրը քուկդ ըլլայ . քանզի դուն
Քանանացիները անկէ պիտի վռ-
ընտես , բթէև անոնք երկաթէ
կառքեր ունենան ու զօրաւոր ըլ-
լան ։

ւ Գլ. ժթ. 18. Գ Թագ. դ. 12.
ա Դատ. ա. 19. դ. 3.
բ Օր. ի. 1.

## ԳԼ. ԺԸ

1 Խորանը Սելովի մէջ կը կանգնեն ։ 2 Երկրին մնացածը գծագրելով՝ եօթը բաժին կ'ընեն ։ 10 Յեսու վիճակով կը բաժնէ զանիկայ ։ 11 Բենիամինին վիճակը ու սահմանը ։ 21 և քաղաքները ։

1 Եւ Իսրայէլի որդւոցը բոլոր ժո-
ղովքը աՍելովի մէջ ժողվուե-
ցան , և բհոն ժողովքի խորանը
կանգնեցին , ու երկիրը անոնց առ-
ջեւ նուաճեցաւ ։
2 Եւ Իսրայէլի որդւոցը մէջ՝ եօ-
թը ցեղ մնացեր էր , որոնք իրենց
3 ժառանգութիւնը առած չէին ։ Եւ
Յեսու Իսրայէլի որդւոցը ըսաւ .
գմինչև ե՞րբ անհոգութիւն պիտի
ընէք , ու պիտի չերթաք ժառան-
գելու ան երկիրը , որն որ ձեր հայ-
րերուն Տէր Աստուածը ձեզի տու-
4 աւ ։ Ամէն մէկ ցեղէն իրեք մարդ
դընտրեցէք , ու զանոնք խրկեմ , որ
երթան ան երկրին մէջը պտըտին ,
ու զանիկայ իրենց ժառանգութեա-
նը համեմատ գրեն , ու ետքը ինծի
5 դառնան ։ Եւ զանիկայ եօթը մա-
սերու պիտի բաժնեն . եՅուդան իր
սահմանին մէջը՝ հարաւային կողմը
կենայ , ու զՅովսեփին տունը իրենց
սահմաններուն մէջը՝ հիւսիսային
6 կողմը պիտի կենան ։ Եւ դուք եր-
կիրը եօթը բաժին գրեցէք , ու հոս
ինծի բերէք , էև մեր Տէր Աստու-
ծոյն առջեւը հոս ձեզի համար վի-
7 ճակ ձգեմ , ըքանզի Ղևտացիները
ձեր մէջը բաժին չունին . որովհետև
անոնց ժառանգութիւնը Տէրոջը
քահանայութիւնն է . թև Գադը՝
ու Ռուբէնը՝ և Մանասէին կէս
ցեղը Յորդանանու անդին կողմը
դէպ 'ի արևելք իրենց ժառանգու-
թիւնները առին , որոնք Տէրոջը
ծառան Մովսէս անոնց տուաւ ։
8 Եւ ան մարդիկները ելան գացին .
ու Յեսու ան երկիրը գրելու գա-
ցողներուն պատուիրեց՝ ըսելով .

Ն. ք. գՔ. 1444

ա Գլ. ժթ. 51. իա. 2. իբ. 9. Եր. է. 12.
բ Դատ. ժը. 31. Ա Թագ. ա. 3, 24. դ. 3, 4.
գ Դատ. ժը. 9.
դ Եբր. տուէք.
ե Գլ. ժե. 1.
զ Գլ. ժզ. 1, 4.
է Գլ. ժդ. 2. Հմր 10.
ը Գլ. ժգ. 33.
թ Գլ. ժգ. 8.

Ն. Ք. Ծ. 1444

Գացէք, և ան երկրին մէջը պտըտելով՝ զանիկայ գրեցէք. ետքը
ինծի դարձէք, որ հոս Սելովի մէջ
Տէրոջը առջևը ձեզի համար վիճակ
9 ձգեմ։ Եւ ան մարդիկները գացին, ու ան երկրին մէջը պտըտեցան, և զանիկայ իր քաղաքներովը
եօթը բաժին ընելով՝ գիրքի մը վըրայ գրեցին, ու Սելովի բանակը
10 եկան Յեսուին։ Եւ Յեսու Սելովի
մէջ Տէրոջը առջևը՝ անոնց համար
վիճակ ձգեց. ու Յեսու հոն երկիրը
բաժնեց Իսրայէլի որդւոցը՝ իրենց
բաժիններուն համեմատ։
11 Եւ նախ Բենիամինի որդւոցը ցեղին վիճակը ելաւ իրենց տոհմերուն
համեմատ. ու իրենց վիճակին սահմանը՝ Յուդայի որդւոցը ու Յով-
12 սեփի որդւոցը մէջտեղը ելաւ։ [ը]Եւ
անոնց հիւսիսային կողմի սահմանը՝
Յորդանանէն եղաւ. ու այն սահմանը հիւսիսային կողմէն՝ Երիքովին քովը կ'ելլէ, և դէպ 'ի արևմուտք՝ լեռը վեր կ'ելլէ, ու Բեթաւանի անապատին մէջ կը վերջա-
13 նայ. Եւ սահմանը՝ անկէ ելլելով
Լուզէն կ'անցնի, Լուզին՝ [ժ]այսինքն
Բեթելին հարաւային կողմէն. ետքը այն սահմանը՝ Ատարօթ աղարը
կ'իջնէ, որ [ի]վարի Բեթորոնին հարաւային կողմը եղող լեռանը քովն
14 է. Եւ այն սահմանը արևմտեան
ծայրը հասնելով՝ դէպ 'ի հարաւ կը
դառնայ՝ հարաւային կողմէն՝ Բեթորոնին դիմացի լեռնէն, ու կը
վերջանայ [ւ]Կարիաթբաաղի մէջ՝ որ
է Կարիաթարիմ, Յուդայի որդւոց
քաղաքը։ Արևմտեան ծայրը ասի-
15 կայ է։ Եւ հարաւային կողմը՝ Կարիաթարիմի ծայրէն սկսելով, սահմանը դէպ 'ի արևմուտք կ'երթայ,
[խ]ու Նափթովայի ջուրին աղբիւրը
16 կ'ելլէ։ Եւ այն սահմանը՝ Ռափայնոց հովիտին մէջը՝ հիւսիսային
կողմը եղող [ծ]Ենովմի որդւոյն ձորին դիմացի լեռանը եզերքը կ'իջնէ, ու Յեբուսին քովէն դէպ 'ի
հարաւ Ենովմի ձորէն իջնելով՝
17 [կ]Ռովգելի աղբիւրը կ'իջնէ. Եւ
հիւսիսային կողմէն նշան կտրելով՝
Ենսամիսը կ'ելլէ, ու անկէ Էդովմինի զառ 'ի վերին դիմացը եղող
Գալիլովթը կ'ելլէ, և [հ]Ռուբէնեան
18 Բաանին վէմը կ'իջնէ. Ետքը [ձ]Արաբային դիմացի կողմէն դէպ 'ի
հիւսիս անցնելով՝ Արաբա կ'իջնէ.
19 Ետքը այն սահմանը դէպ 'ի հիւսիս՝
Բեթագղային քովէն կ'անցնի, ու
այն սահմանը՝ Աղի ծովուն հիւսիսային ծոցը՝ ու Յորդանանու հարաւային ծայրը կը վերջանայ։
Հարաւային սահմանը ասիկայ է։
20 Եւ արևելեան կողմի սահմանը Յոր-

ը Տե՛ս գլ. ժզ. 1։
ժ Ծն. իը. 19։ Դատ. ա. 23։
ի Գլ. ժզ. 3։
ւ Տե՛ս գլ. ժե. 9։
խ Գլ. ժե. 9։
ծ Գլ. ժե. 8։
կ Գլ. ժե. 7։
հ Գլ. ժե. 6։
ձ Գլ. ժե. 6։

դանանն է։ Բենիամինի որդւոցը
ժառանգութիւնը չուրջանակի իր
սահմաններովը անոնց տոհմերուն
համեմատ ասիկայ է։
21 Եւ ասոնք են Բենիամինի որդւոցը ցեղին քաղաքները՝ իրենց տոհմերուն համեմատ. Երիքով՝ Բե-
22 թագղա՝ Եմեկկասիս՝ Բեթարա-
23 բա՝ Սեմարիմ՝ Բեթէլ՝ Աւիմ՝
24 Փարա՝ Եփրա՝ Քեփարամոննա՝
Հոփնի ու Գաբա. տասուերկու
25 քաղաք և անոնց գեղերը։ Գա-
26 բաւոն՝ Ռամա՝ Բերովթ՝ Մասս-
27 փա՝ Կեփիրա՝ Մոսա՝ Ռէկեմ՝
28 Յերփայէլ՝ Թարաղա՝ Սելա՝ Էլէփ՝
[ղ]Յեբուս այսինքն Երուսաղէմ՝
Գաբաաթ ու Կարիաթ. տասնուչորս քաղաք և անոնց գեղերը։
Բենիամինին որդւոցը ժառանգութիւնը իրենց տոհմերուն համեմատ՝
ասիկայ է։

ղ Գլ. ժե. 8։

ԳԼ. ԺԹ

1 Շմաւոնին. 10 Զաբուղոնին. 17 Իսաքարին.
24 Ասերին. 32 Նեփթաղիմին. 40 և Դանին
վիճակները։ 46 Իսրայէլի որդիքը Յեսուին
ժառանգութիւն կու տան։

1 Եւ երկրորդ վիճակը Շմաւոնին
ելաւ, Շմաւոնի որդւոցը ցեղին՝ իրենց տոհմերուն համեմատ.
[ա]ու անոնց ժառանգութիւնը՝ Յուդայի որդւոցը ժառանգութեան
2 մէջը եղաւ։ Եւ [բ]իրենց ժառանգութեանը մէջ այս քաղաքները ունեցան. Բերսաբէէ, Սաբէէ, Մո-
3 լադա, Ասեր սուաղ, Բաղա, Ա-
4 սեմ, Էլթուղադ, Բաթուլ, Հոր-
5 մա, Սիկելակ, Բեթմարքաբովթ,
6 Ասեր սուսա, Բեթլաբաովթ, և
Սարուհէն. տասուերեք քաղաք ու
7 անոնց գեղերը։ Ային, Ռեմոն,
Եթեր, և Ասան. չորս քաղաք ու
8 անոնց գեղերը։ Եւ այս քաղաքներուն բոլորտիքը եղած բոլոր գեղերը՝ մինչև *Բաաղեթ բէերը, ու
Հարաւային Ռաման"։ Շմաւոնի
որդւոցը ցեղին ժառանգութիւնը
իրենց տոհմերուն համեմատ՝ ասի-
9 կայ է։ Շմաւոնի որդւոցը ժառանգութիւնը՝ Յուդայի որդւոցը
բաժինէն եղաւ. քանզի Յուդայի
որդւոցը բաժինը շատ էր իրենց.
[գ]անոր համար Շմաւոնի որդիքը
անոնց ժառանգութեանը մէջ ժառանգութիւն առին։
10 Ու երրորդ վիճակը՝ Զաբուղոնի
որդւոցը ելաւ՝ իրենց տոհմերուն
համեմատ. և անոնց ժառանգութեանը սահմանը մինչև Սարիդը ե-
11 ղաւ. [դ]Ու անոնց սահմանը՝ դէպ
'ի ծովը ու Մարաղան կ'ելլէ, և
Դաբասեթը կը հասնի, ու [ե]Յեկնամի դիմացը եղող ձորը կը հասնի,
12 Եւ Սարիդէն՝ դէպ 'ի արևելեան

ա Հմր 9։
բ Ա Մն. դ. 28։
* Կամ՝ Բաաղեթ բէեր ռաման հարաւային կողմէն։
գ Հմր 1։
դ Ծն. խթ. 13։
ե Գլ. ժբ. 22։

Ն․Ք․ ՉՔ․ 1444

կողմը՝ Քասղովթ Թաբորին սահ֊
մանը կը դառնայ , ու Դաբարա֊
թէն ելլելով՝ Յափիէն վեր կ'ելլէ ,
13 Եւ անկէ դէպ 'ի արեւելք անցնելով՝
արեւելեան կողմէն Գեթքոփերը . Ի֊
թագասինը կ'անցնի , ու Ռեմոն
14 մեթօարը և Նուան կ'ելլէ . Ետքը
այս սահմանը՝ հիւսիսային կողմէն
Ենաթօնը կը պտըտի , ու Յեփթա֊
15 յելի ձորին մէջ կը վերջանայ . Եւ
Կատտաթ , ու Նաաղօլ , և Սամ֊
րօն . ու Յադելա , և Բեթլէհէմ .
տասուերկու քաղաք ու անոնց գե֊
16 ղերը ։ Զաբուղոնի որդւոցը ժա֊
ռանգութիւնը իրենց տոհմերուն
համեմատ ասիկայ է . աս քաղաք֊
ները ու անոնց գեղերը ։
17 Չորրորդ վիճակը Իսաքարին ե֊
լաւ , Իսաքարի որդւոցը իրենց
18 տոհմերուն համեմատ . Ու անոնց
սահմանը այսպէս եղաւ . Յեզրայէլ ,
19 ու Քասելովթ , և Սունամ , Ու Ա֊
փերէմ , և Սիան , ու Անարէթ ,
20 Եւ Ռաբբիթ . ու Կեսիօն , ու Ա֊
21 բէս , Եւ Ռամաթ ու Ենգանիմ ,
22 և Ենքադդա , ու Բեթփասես . Եւ
այս սահմանը՝ Թաբորը . Սասիման
ու Բեթսամիւսը կը հասնի , ու ա֊
նոնց սահմանը Յորդանանու մէջ
կը վերջանայ . տասնուվեց քաղաք
23 ու անոնց գեղերը ։ Իսաքարի որ֊
դւոյը ցեղին ժառանգութիւնը ի֊
րենց տոհմերուն համեմատ՝ ասիկայ
է , այս քաղաքները ու անոնց գե֊
ղերը ։
24 Եւ հինգերորդ վիճակը Ասերի
որդւոցը ցեղին ելաւ՝ իրենց տոհմե֊
25 րուն համեմատ ։ Ու անոնց սահ֊
մանը այսպէս եղաւ . Քեղկաթ , ու
26 Աղի , և Բետէն , ու Աքսափ , Եւ
Ալամելէք . ու Ամադ , և Մասաղ .
ու արեւմտեան կողմէն մինչեւ Կար֊
մեղոսը և Սիօր լեբնաթը կը հաս֊
27 նի , Ու արեւելեան կողմէն՝ դէպ 'ի
Բեթդագոն կը դառնայ , ու հիւ֊
սիսային կողմէն՝ Զաբուղոնը , Յեփ֊
թայելի ձորը , Բեթամեկը ու Նէիէ֊
լը կը հասնի , և ձախ կողմէն՝ Քա֊
28 բուղը կ'ելլէ , Ու Եբրոնը , և Ռոոբը ,
ու Համմոնը , և Կանան , ղմինչեւ
29 մեծ Սիդոնը . Ետքը այս սահմանը
Ռամա կը դառնայ , մինչեւ ի Յիւ֊
րոս՝ ամուր քաղաքը , և այս սահ֊
մանը Ոսսան դառնալով՝ ծովուն
մէջ՝ ըԱքեզիբին վիճակին մէջը կը
30 վերջանայ . Ու Ամմա , և Ափէկ ,
ու Ռոոբ . քսանուերկու քաղաքներ
31 ու անոնց գեղերը ։ Ասերի որդւո֊
ցը ցեղին ժառանգութիւնը իրենց
տոհմերուն համեմատ՝ ասիկայ է ,
աս քաղաքները ու անոնց գեղերը ։
32 Վեցերորդ վիճակը՝ Նեփթաղիմի
որդւոցը ելաւ , այսինքն Նեփթա֊
ղիմի որդւոցը՝ իրենց տոհմերուն
33 համեմատ ։ Ու անոնց սահմանը
այսպէս եղաւ . Հելեփէն ու Ալօնէն
մինչեւ Սանանիմը , ու Ադամի Նա֊
գեբը , և Յաբնէլը ու մինչեւ Լա֊
կումը , ու սահմանը Յորդանանու
34 մէջ կը վերջանայ ։ Եւ Իայս սահ֊
մանը՝ արեւմտեան կողմէն Ազանօթ
Թաբորը կը դառնայ , ու անկէ
Հուկօկը կ'ելլէ . և հարաւային
կողմէն մինչեւ Զաբուղոնը կը հաս֊
նի , ու արեւմտեան կողմէն՝ մինչեւ
Ասերը , և արեւելեան կողմէն՝ մինչեւ
Յուդան ու Յորդանանը կը հասնի .
35 Եւ պարսպաւոր քաղաքները՝ Ասե֊
դիմ , Սէր , Ամաթ , Ռեկկաթ ,
36 Քեներեթ , Ադամա , Ռամա ,
37 Հասոր , Կադէս , Եդրայի , Են֊
38 հասոր , Յարօն , Մակդաղիէլ ,
Հարէմ , Բեթանաթ ու Բեթսա֊
միւս . տասնուինը քաղաք և անոնց
39 գեղերն են ։ Նեփթաղիմի որդւո֊
ցը ցեղին ժառանգութիւնը իրենց
տոհմերուն համեմատ ասիկայ է , այս
քաղաքները ու անոնց գեղերը ։
40 Եօթներորդ վիճակը Դանի որ֊
դւոցը ցեղին ելաւ՝ իրենց տոհմե֊
41 րուն համեմատ ։ Եւ անոնց ժա֊
ռանգութեան սահմանը այսպէս ե֊
ղաւ . Սարաա , ու Եսթաւուղ , և
42 Իրսամէս , Ու ժՍաղաբին , և Այե֊
43 ղոն , ու Յեթլա , Եւ Ելոն , ու
44 Թամնաթա , և Ակկարոն , Ու Ել֊
թեկէ , և Գաբաթոն , ու Բաալօթ ,
45 Ու Եհուդ , և Բանէ բարակ , ու
46 Գեթրէմոն , Եւ Մէարկոն ու Ռակ֊
կոն , էՅոպպէին դիմացը եղած սահ֊
47 մանովը մէկտեղ ։ Եւ ԼԴանի որ֊
դւոցը սահմանը՝ իրենց պզտիկ ելաւ .
ուստի Դանի որդիքը ոտք ելան , ու
Լէսեմի հետ պատերազմեցան , և զա֊
նիկայ առնելէն ետքը՝ սուրի բերնէ
անցուցին , ու անիկայ ժառանգե֊
լով՝ անոր մէջը բնակեցան , և Լէ֊
սեմը՝ իրենց հօրը Դանին անունո֊
48 վը՝ ԽԴան կոչեցին ։ Դանի որդւոցը
ցեղին ժառանգութիւնը իրենց
տոհմերուն համեմատ ասիկայ է , աս
քաղաքները ու անոնց գեղերը ։
49 Ու երկիրը իր սահմաններովը
բաժնելէն լմնցընելէն ետքը , Իս֊
րայէլի որդիքը՝ Նաւեան Յեսու֊
ին՝ իրենց մէջը ժառանգութիւն
50 տուին . Տէրոջը հրամանաւը՝ անոր
ուզած քաղաքը ծԹամնաթ սարան
իրեն տուին՝ Եփրեմի լեռանը վրայ .
ու անիկայ քաղաքը շինեց , և անոր
մէջ բնակեցաւ ։
51 կԱսոնք են ան ժառանգութիւն֊
ները՝ որ Եղիազար քահանան , և
Նաւեան Յեսուն , ու Իսրայէլի
որդւոցը ցեղերուն նահապետները՝
հՍելովի մէջ Տէրոջը առջեւը՝ ժո֊

Margin notes:

ղ Գլ․ ԺԱ․ Տ․ Դատ․ Ա․ 31։
ը Բ Թագ․ Ե․ 11։
ըԾն․ ԼԲ․ 5։ Դատ․ Ա․ 31։ Մեք․ Ա․ 14։

Ն․Ք․ ՉՔ․ 1444
Ի Բ Օր․ ԼԳ․ 23։
ժ Դատ․ Ա․ 35։
է Գոր․ Թ․ 36։
լ Տե․ Դատ․ ԺԸ։
խ Դատ․ ԺԸ․ 29։
ծ Գլ․ ԻԴ․ 30։
1444
կ Թու․ ԼԴ․ 17։ Գլ․ ԺԴ․ 1։
հ Գլ․ ԺԸ․ 1։ 10։

Ն. Ք. ԶՔ. 1444

ղովքի խորանին դրանը քովը վի-
ճակով բաժնեցին. ու երկիրը բաժ-
նելը լմնցուցին ։

ԳԼ. Ի

1 Աստուած հրաման կ'ընէ, 7 ու Իսրայէլի որ-
դիքը ապաստանի վեց քաղաքները կ'որոշեն ։

1 Եւ Տէրը խօսեցաւ Յեսուին՝ ըսե-
2 լով. Խօսէ Իսրայէլի որդւոցը,
ու ըսէ. Մովսէսին ձեռքովը՝ ան
իմ ձեզի ըսած ապաստանի քա-
ղաքներս ձեզի համար որոշեցէք.
3 Որպէս զի սխալմամբ՝ անգիտու-
թեամբ մարդ զարնող սպաննողը
հոն փախչի. ու անոնք ձեզի ա-
պաստանարան ըլլան՝ արեան վրէժ-
4 խնդիր եղողէն. Եւ անգիտութեամբ
սպաննողը ան քաղաքներուն մէկուն
մէջը թող փախչի, ու քաղաքին
դուռը կայնի, և ան քաղաքին ծե-
րերուն իր իրաւունքը խօսի, որ
լսեն. ու անոնք զանիկայ քաղա-
քին մէջը իրենց քովը առնելով՝
անոր մէկ տեղ մը տան, որ իրենց
5 հետ բնակի ։ Ու երբոր արեան
վրէժխնդիրը անոր ետևէն իյնայ,
սպաննողը անոր ձեռքը չտան.
քանզի անիկայ իր դրացին անգի-
տութեամբ մեռցուցեր է, և առա-
ջուց անոր դէմ թշնամութիւն
6 մը չունէր ։ Եւ անիկայ ան քա-
ղաքին մէջը պիտի բնակի, մինչև
որ դատաստանի համար ժողովքին
առջևը կայնի, մինչև որ ան օրե-
րը եղող քահանայապետը մեռնի.
ետքը սպաննողը թող դառնայ, իր
քաղաքը ու իր տունը երթայ.
այսինքն ան քաղաքը՝ ուսկից որ
փախչեր էր ։
7 Ուստի Գալիլեայի մէջ Կադէսը
զատեցին՝ Նեփթաղիմի լեռնակող-
մը, Սիւքէմը՝ Եփրեմի լեռնակող-
մը, և Կարիաթ արբան՝ այսինքն
Քեբրոնը՝ Յուդայի լեռնակողմը ։
8 Ու Երիքովի դիմացը Յորդանանու
անդիի կողմը դէպ 'ի արևելք՝ Ռու-
բէնի ցեղէն՝ անապատին դաշտին
մէջ՝ Բոսորը, և Գադի ցեղէն՝
Գաղաադու մէջ՝ Ռամովթը, ու
Մանասէի ցեղէն՝ Բասանի մէջ՝
9 Գովղանը տուին ։ Բոլոր Իսրա-
յէլի որդւոցը համար՝ ու անոնց մէ-
ջը բնակող օտարականին համար
որոշուած քաղաքները ասոնք են.
որպէս զի ամէն ով որ սխալմամբ
մարդ մեռցընէ, հոն փախչի, ու
արեան վրէժխնդրին ձեռքովը չը-
մեռնի, մինչև որ դատաստանի հա-
մար ժողովքին առջևը չկայնի ։

ԳԼ. ԻԱ

1 Ղևտացւոց վիճակով քառասնուութը քաղաք
կը տրուի միւս ցեղերուն ժառանգութիւննե-
րէն ։ 43 Աստուած իր խոստմունը պէս՝ եր-
կիրը անոնց կու տայ, ու կը հանգըստացընէ
զանոնք ։

1 Ու Ղևտացւոց նահապետները՝
Եղիազար քահանային, Նա-
ւեան Յեսուին և Իսրայէլի որդւոցը
ցեղերուն նահապետներուն մօտե-
2 ցան, Ու Քանանու երկիրը Սելովի
մէջ խօսեցան անոնց՝ ըսելով.
Տէրը Մովսէսին ձեռքովը հրա-
մայեց՝ որ մեզի բնակելու համար
քաղաքներ, ու մեր անասուննե-
րուն համար՝ անոնց արուարձան-
3 ները տրուին ։ Ու Իսրայէլի որդի-
քը Տէրոջը հրամանաւը՝ իրենց
ժառանգութիւններէն՝ աս քա-
ղաքները ու անոնց արուարձաննե-
րը Ղևտացւոց տուին ։
4 Եւ առաջին վիճակը Կահաթեանց
ազգատոհմներուն ելաւ. ու Ղև-
տացիներէն Ահարոն քահանային
որդւոցը՝ վիճակով տասուերեք
քաղաք ելաւ, Յուդայի ցեղէն,
Շմաւոնի ցեղէն ու Բենիամինի
5 ցեղէն ։ Եւ Կահաթին միւս որ-
դւոցը՝ Եփրեմի ցեղին ազգատոհմ-
ներէն, ու Դանի ցեղէն, և Մա-
նասէի կէս ցեղէն՝ վիճակով տասը
6 քաղաք տրուեցաւ ։ Ու Գերսոնի
որդւոցը՝ Իսաքարի ցեղին ազգա-
տոհմներէն, և Ասերի ցեղէն, ու
Նեփթաղիմի ցեղէն, և Բասանի
մէջ եղող Մանասէի կէս ցեղէն՝
վիճակով տասուերեք քաղաք տը-
7 րուեցաւ ։ Մերարիի որդւոցը՝ ի-
րենց տոհմերուն համեմատ՝ Ռու-
բէնի ցեղէն, Գադի ցեղէն, ու
Զաբուղոնի ցեղէն՝ տասուերկու
8 քաղաք տրուեցաւ ։ Ու Իսրայէլի
որդիքը՝ աս քաղաքները ու անոնց
արուարձանները՝ վիճակով Ղևտա-
ցւոց տուին, ինչպէս որ Տէրը
պատուիրեր էր Մովսէսին ձեռ-
քովը ։
9 Եւ Յուդայի որդւոցը ցեղէն, ու
Շմաւոնի որդւոցը ցեղէն՝ աս ի-
րենց անունովը յիշուած քաղաք-
10 ները տուին. Ու Ահարոնի որդւո-
ցը եղան, որոնք Ղևիի որդւոցմէ
եղող Կահաթեանց ազգատոհմնե-
րէն էին. քանզի առաջին վիճակը
11 անոնցն էր ։ Եւ անոնց՝ Յու-
դայի լեռանը վրայ՝ Ենակի հօրը
Արբային քաղաքը՝ այսինքն Քեբ-
րոնը տուին. անոր շրջակայ ա-
12 րուարձաններովը. Եւ քաղաքին
ագարակները ու գեղերը՝ Յեփո-
նեան Քաղեբին կալուածք տուին.
13 Ուստի Ահարոն քահանայի որդւո-
ցը՝ սպաննողի համար ապաստանի
քաղաք ըլլալու որոշուած Քեբրո-
նը տուին իր արուարձաններովը.
Նաև Լեբնան՝ իր արուարձաննե-
14 րովը, Եւ Յաթիրը՝ իր արուար-

Ն. Ք. ԶՔ. 1444

ա Գլ. ԺԴ. 1 ։ ԺԵ. 4 ։
բ Գլ. ԺԸ. 1 ։
գ Թու. ԼԵ. 2 ։
դ Հմր 8, 19 ։
ե Տե՛ս Գլ. ԻԴ. 33 ։
զ Հմր 20, Ա. ։
է Հմր 27, Ա. ։
ը Հմր 34, Ա. ։
թ Հմր 3 ։
ժ Թու. ԼԵ. 2 ։
ի Հմր 4 ։
լ Ա Մն. Զ. 55 ։
խ Գլ. Ի. 7 ։ Ղու. Ա. 39 ։
ծ Գլ. ԺԵ. 13. 14 ։
կ Ծն. ԻԳ. 2 ։
հ Գլ. ԺԴ. 14 ։ Ա Մն. Զ. 56 ։
ձ Ա Մն. Զ. 57, Ա. ։
ղ Գլ. ԺԵ. 54 ։ Ի. 7 ։
ճ Գլ. ԺԵ. 42 ։
մ Գլ. ԺԵ. 48 ։

ա Ել. ԻԱ. 13 ։ Թու. ԼԵ. 6, 11, 14 ։ Բ Օր. ԺԹ. 2, 9 ։
բ Հռութ. Դ. 1, 2 ։
գ Թու. ԼԵ. 12 ։
դ Թու. ԼԵ. 12, 25 ։
ե Գլ. ԻԱ. 32 ։ Ա Մն. Զ. 76 ։
* Եբր. սրբեցին՝
զ Գլ. ԻԱ. 21 ։ Բ Մն. Ժ. 1 ։
է Գլ. ԺԴ. 15 ։ ԻԱ. 11, 13 ։
ը Ղւ. Ա. 39 ։
թ Բ Օր. Դ. 43 ։ Գլ. ԻԱ. 36 ։ Ա Մն. Զ. 78 ։
ժ Գլ. ԻԱ. 38 ։ Գ Թագ. ԻԲ. 3 ։
ի Գլ. ԻԱ. 27 ։
լ Թու. ԼԵ. 15 ։
խ Հմր 6 ։

Ն. Ք. ԶՔ.
1444

ձաններովը, [ժ]ու Եսթեմովը՝ իր
15 արուարձաններովը, Եւ [ա] Քօղօնը՝
իր արուարձաններովը, [բ] ու Դաբի-
16 րը՝ իր արուարձաններովը, Եւ
[գ] Այինը՝ իր արուարձաններովը,
[դ] ու Յետտան՝ իր արուարձաններո-
վը, և [ե] Բեթսամիւսը՝ իր արուար-
ձաններովը. աս երկու ցեղէն ինը
17 քաղաք տուին ։ Ու Բենիամինի
ցեղէն՝ [զ] Գաբաւոնը՝ իր արուար-
18 ձաններովը, [է] Գաբան՝ իր արուար-
ձաններովը, Անաթովթը՝ իր ա-
րուարձաններովը, ու [ը] Գաղմօնը՝
իր արուարձաններովը. չորս քա-
19 ղաք տուին ։ Ահարոնի որդւոցը
քահանաներուն բոլոր քաղաքները
տասնըերեք քաղաք էին՝ ու անոնց
արուարձանները ։
20 [թ] Եւ Կահաթի որդւոցմէ մնացած
Ղևտացի Կահաթեանց ազգատոհմ-
ներն ալ՝ Եփրեմի ցեղէն վիճակով
21 քաղաքներ առին. Ու անոնց՝ Եփ-
րեմի լեռնակողմը՝ սպաննողի հա-
մար ապաստանի քաղաք ըլլալու
որոշուած [ի] Սիւքէմը տուին իր
22 արուարձաններովը. Նաև Գա-
զերը՝ իր արուարձաններովը, և
Կաբսեմը՝ իր արուարձաններովը,
ու Բեթորոնը՝ իր արուարձանն-
23 երովը. չորս քաղաք տուին ։ Եւ
Դանի ցեղէն՝ Ելթեկէն՝ իր ա-
24 րուարձաններովը, Գաբաթօնը՝ իր
արուարձաններովը, Այեղօնը՝ իր
արուարձաններովը, ու Գեթրե-
մօնը՝ իր արուարձաններովը. չորս
25 քաղաք տուին ։ Եւ Մանասէի կէս
ցեղէն՝ Թանաքը՝ իր արուարձան-
ներովը, ու Գեթրեմօնը՝ իր ա-
րուարձաններովը. երկու քաղաք
26 տուին ։ Կահաթի որդւոցը մնա-
ցած ազգատոհմներուն բոլոր քա-
ղաքները տասն էին, և անոնց ա-
րուարձանները ։
27 [լ] Ու Ղևտացւոց ազգատոհմներէն
եղող Գերսոնի որդւոցը՝ Մանա-
սէի կէս ցեղէն սպաննողի համար
ապաստանի քաղաք ըլլալու որո-
շուած Բասանի մէջ [խ] Գօվղանը՝ իր
արուարձաններովը. Նաև Բեեստա-
րան՝ իր արուարձաններովը. երկու
28 քաղաք տուին ։ Եւ Իսաքարի ցե-
ղէն՝ Կեսիօնը՝ իր արուարձաններո-
վը, Դաբարաթը՝ իր արուարձան-
29 ներովը, Յերիմութը՝ իր արուար-
ձաններովը, Ենգանիմը՝ իր ա-
րուարձաններովը. չորս քաղաք
30 տուին ։ Եւ Ասերի ցեղէն՝ Մա-
սաղը՝ իր արուարձաններովը, Աբ-
31 դօնը՝ իր արուարձաններովը, Քեղ-
կաթը՝ իր արուարձաններովը, և
Րոոբը՝ իր արուարձաններովը. չորս
32 քաղաք տուին ։ Ու Նեփթաղիմի
ցեղէն՝ սպաննողի համար ապաս-
տանի քաղաք ըլլալու որոշուած
Գալիլեայի մէջ [ծ] Կադէսը՝ իր ա-
րուարձաններովը. Նաև Եմաթ
դովրը՝ իր արուարձաններովը, ու
Կարթանը՝ իր արուարձաններովը.
33 իրեք քաղաք տուին ։ Գերսո-
նեանց բոլոր քաղաքները՝ անոնց
ազգատոհմներուն համեմատ տա-
սըերեք քաղաք էին՝ ու անոնց ա-
րուարձանները ։
34 [կ] Եւ մնացած Ղևտացիներուն՝
այսինքն Մերարիի որդւոցը ազգա-
տոհմներուն՝ Զաբուղոնի ցեղէն՝
Յեկնամը՝ իր արուարձաններովը,
Կարթան՝ իր արուարձաններովը,
35 Դեմնան՝ իր արուարձաններովը,
ու Նաաղօլը՝ իր արուարձաններովը.
36 չորս քաղաք տուին ։ Եւ Ռուբէնի
ցեղէն՝ [հ] Բոսորը՝ իր արուարձանն-
երովը, ու Յասսան՝ իր արուարձան-
37 ներովը, Կադեմօթը՝ իր արուար-
ձաններովը, ու Մեփայաթը՝ իր
արուարձաններովը. չորս քաղաք
38 տուին ։ Եւ Գադի ցեղէն՝ սպան-
նողի համար ապաստանի քաղաք
ըլլալու որոշուած Գաղաադի մէջ
[ձ] Ռամովթը՝ իր արուարձաններովը.
Նաև Մանայիմը՝ իր արուարձանն-
39 երովը, Եսեբոնը՝ իր արուարձանն-
երովը, ու Յազերը՝ իր արուարձան-
ներովը. ամէնը չորս քաղաք տու-
40 ին ։ Ղևտացւոց ազգատոհմներէն
մնացած Մերարիի որդւոցը բոլոր
քաղաքները՝ իրենց տոհմերուն հա-
մեմատ իրենց վիճակովը՝ տասներ-
41 կու քաղաք եղաւ ։ [ղ] Իսրայէլի որ-
դւոցը կալուածքներուն մէջ Ղև-
տացւոց բոլոր քաղաքները՝ քառ-
սունըութը քաղաք էին, ու անոնց
42 արուարձանները ։ Աս քաղաքնե-
րուն ամէն մէկը՝ իր բոլորտիքը
արուարձաններ ունէր. աս քա-
ղաքներուն ամէնն ալ այնպէս էր ։
43 Եւ Տէրը Իսրայէլին տուաւ [ճ] ան
բոլոր երկիրը, որն որ անոնց հայ-
րերուն տալու երդում ըրեր էր. և
զանիկայ ժառանգեցին, ու անոր
44 մէջ բնակեցան ։ [մ] Եւ Տէրը զանոնք
ամէն կողմէն հանգստացուց, ինչ-
պէս որ անոնց հայրերուն երդում
ըրեր էր. ու [յ] անոնց բոլոր թշնա-
միներէն բնաւ մէկը չկրցաւ անոնց
դէմ դնել. քանզի Տէրը անոնց ա-
մէն թշնամիները անոնց ձեռքը
45 տուաւ ։ [ն] Եւ Տէրը Իսրայէլի տանը
համար որչափ բարի խօսքեր որ
զրուցեր էր, անոնցմէ բան մը
չպակսեցաւ. ամէնն ալ կատա-
րուեցաւ ։

ԳԼ. ԻԲ

1 Երկուք ու կէս ցեղերը օրհնութիւնով տու-
ներնին կը խրկուին, 9 որոնք իրենց ճամբոր-
դութեանը մէջ վկայութեան սեղան մը կը շի-

---

ա Գլ. ժե. 50։
բ Ա Մն. զ. 58, Գլ. ժե. 51։
գ Գլ. ժե. 49։
դ Ա Մն. զ. 59, Գլ. ժե. 42։
ե Գլ. ժե. 55։
զ Գլ. ժե. 10։
է Գլ. ժը. 25։
ը Գլ. ժը. 24։
թ Ա Մն. զ. 60։
ժ Հմր 5, Ա Մն. զ. 66։
ի Գլ. ի. 7։
լ Հմր 6, Ա Մն. զ. 71։
խ Գլ. ի. 8։
ծ Գլ. ի. 7։
կ Հմր 7, Տե. Ա Մն. զ. 77։
հ Գլ. ի. 8։
ձ Գլ. ի. 8։
ղ Թւ. լե. 7։
ճ Ծն. ժգ. 15, ժե. 18, իզ. 3, իը. 4, 13։
մ Գլ. ժա. 23, իբ. 4։
յ Օր. է. 24։
ն Գլ. իգ. 14։

Ն. Ք. ՂՔ. 1444

նեն ։ 11 Իսրայէլացիք կը գայթակղին աս բանիս վրայ ։ 21 Իսկ անոնք իրենց դիտաւորութիւնը կը բացատրեն ։

1 Ան ատենը Յեսու իրեն կանչեց
Ռուբէնեանները . Գադեաննե-
2 րը ու Մանասէին կէս ցեղը . Եւ
անոնց ըսաւ . ᵃՏէրոջը ծառան
Մովսէս ինչ որ ձեզի հրամայեր էր .
դուք անոնց ամէնն ալ պահեցիք .
ᵇԵւ իմ խօսքս մտիկ ըրիք ամէն
բանի մէջ որ ձեզի պատուիրե-
3 ցի ։ Այսչափ շատ օրեր՝ մին-
չեւ աս օրս ձեր եղբայրները չը-
թողուցիք . և ձեր Տէր Աստու-
ծոյն *պատուիրանքները ամբողջ՝
4 պահեցիք ։ Ու հիմա ձեր Տէր Աս-
տուածը ձեր եղբայրները հանգըս-
տացուց . ինչպէս որ անոնց ըսաւ .
ուստի հիմա դարձէ՛ք , ձեր վրան-
ները ու ձեր կալուածոց երկիրը
գացէք , ᶜորն որ Տէրոջը ծառան
Մովսէս Յորդանանու անդիի կողմը
5 ձեզի տուաւ ։ Միայն թէ աղէկ
ᵈզգուշութիւն ընէք ՚ի գործ դնե-
լու ան պատուիրանքը ու օրէնքը ,
որն որ Տէրոջը ծառան Մովսէս ձե-
զի պատուիրեց , ᵉոր ձեր Տէր Աս-
տուածը սիրէք , և անոր ամէն ճամ-
բաներուն մէջը քալէք . ու անոր
պատուիրանքները պահէք , և անոր
յարիք , ու ձեր բոլոր սրտովը և
բոլոր հոգիովը զանիկայ պաշտէք ։
6 Ու Յեսու ᶠօրհնեց զանոնք , և ար-
ձակեց . ու անոնք իրենց վրանները
7 գացին ։ ( Եւ Մանասէի կէս ցե-
ղին՝ Մովսէս ժառանգութիւն տուեր էր
Բասանի մէջ , ᵍու միւս կէսին՝
Յեսու անոնց եղբայրներուն հետ՝
Յորդանանու ասդիի կողմը տուաւ
դէպ ՚ի արեւմուտք ։ ) Ու երբոր
Յեսու զանոնք իրենց վրանները
8 խրկեց , զանոնք օրհնեց . Եւ անոնց
խօսեցաւ՝ ըսելով . Շատ հարըս-
տութիւնով ու խիստ շատ անա-
սուններով , արծաթով , ոսկիով ,
պղնձով , երկաթով ու խիստ շատ
հանդերձներով ձեր վրանները դար-
ձէք , ու ʰձեր թշնամեաց աւարը
ձեր եղբայրներուն հետ բաժնեցէ՛ք ։
9 Ուստի Ռուբէնի որդիքը՝ Գադի
որդիքը ու Մանասէին կէս ցեղը՝
Քանանու երկիրը Սէլովի մէջ Իս-
րայէլի որդւոցմէ զատուեցան գա-
ցին , որ իրենց ժառանգութեան
երկիրը՝ այսինքն ⁱԳաղաադու երկի-
րը երթան , որն որ Մովսէսին ձեռ-
քովը տրուած Տէրոջը հրամանաւը
առեր էին ։
10 Ու երբոր Յորդանանու մօտ տե-
ղուանքը եկան , ան կողմը՝ որ Քա-
նանու երկրին մէջն է , Ռուբէնի
որդիքը՝ Գադի որդիքը ու Մանա-
սէին կէս ցեղը՝ հոն Յորդանանու

քովը մէկ սեղան մը շինեցին . երե-
11 ւոյթով մեծ սեղան մը ։ Ու Իսրա-
յէլի որդիքը ᵏլսեցին որ՝ ահա Ռու-
բէնի որդիքը՝ Գադի որդիքը և Մա-
նասէին կէս ցեղը՝ Քանանու երկ-
րին կողմը Յորդանանու մօտ՝ ուր
որ Իսրայէլի որդիքը անցեր էին .
12 սեղան մը շիներ են . Ու երբոր Իս-
րայէլի որդիքը լսեցին . ˡԻսրայէլի
որդւոցը բոլոր ժողովքը Սէլովի մէջ
ժողվուեցան , որ անոնց վրայ եր-
13 թան պատերազմելու համար ։ Եւ
Իսրայէլի որդիքը՝ ᵐՌուբէնեանց՝
Գադեանց ու Մանասէի կէս ցեղին՝
Գաղաադու երկիրը խրկեցին ⁿԵ-
ղիազարին որդին Փենէհէս քահա-
14 նան . Եւ անոր հետ տասը իշխան ,
այսինքն Իսրայէլի ամէն ցեղերուն
նահապետութիւններէն մէյմէկ իշ-
խան , ᵒորոնց ամէն մէկը Իսրայէ-
լին հազարաւորներուն նահապե-
15 տութեանց իշխաններն էին . Եւ
անոնք Գաղաադու երկիրը գացին
Ռուբէնի որդւոցը՝ Գադի որդւոցը
ու Մանասէի կէս ցեղին , և անոնց
16 հետ խօսեցան՝ ըսելով . Տէրոջը
բոլոր ժողովքը այսպէս կ՚ըսէ . Աս
ի՞նչ մեղք է , որ դուք Իսրայէլի
Աստուծոյն դէմ գործեցիք՝ այսօր
Տէրոջմէ խոտորելով , ᵖև այսօր
Տէրոջը դէմ ապստամբութիւն ը-
նելու համար՝ ձեզի սեղան շինեցիք ։
17 Միթէ ᑫՓոգովրի անօրէնութիւնը
պզտի՞կ բան մըն է մեզի . որ անկէ՝
մինչեւ աս օրս չմաքրուեցանք . ու
Տէրոջը ժողովքին վրայ ան հա-
18 րուածը եկաւ . Եւ դուք այսօր
Տէրոջմէ խոտորեցաք . ուստի թէ
որ դուք այսօր Տէրոջմէ ապստամ-
բիք . ան ալ վաղը ʳԻսրայէլի բոլոր
ժողովքին վրայ պիտի բարկանայ ։
19 Սակայն թէ որ ձեր կալուածոց եր-
կիրը անմաքուր կը համարէք , Տէրո-
ջը կալուածոց երկիրը անցէք ,
ˢուր որ Տէրոջը խորանը կանգնած
է , ու մեր մէջը ժառանգութիւն
առէք . և մեր Տէր Աստուծոյն
սեղանէն ՚ի զատ ձեզի սեղան շինե-
լով՝ Տէրոջը ապստամբ մի՛ ըլլաք ,
ու մեզմէ ալ մի՛ ապստամբիք ։
20 ᵗԵրբոր Զարայեան Աքարը նզո-
վածէն առնելով՝ մեղք գործեց , մի-
թէ Տէրոջը բարկութիւնը Իսրա-
յէլի բոլոր ժողովքին վրայ չեկա՞ւ .
ու ան մարդը իր անօրէնութեանը
մէջ մինակ չմեռաւ ։
21 Եւ Ռուբէնի որդիքը՝ Գադի որ-
դիքը ու Մանասէի կէս ցեղը պա-
տասխան տուին , ու Իսրայէլի հա-
22 զարապետներուն ըսին . †Աս-
տուածներուն Եհովայ Աստուածը ,
աստուածներուն Եհովայ Աստուա-
ծը՝ ինքը ᵘգիտէ . ու Իսրայէլն ալ

ᵃ Թու. լբ. 20։ բ Օր. գ. 18։
ᵇ Գլ. ա. 16, 17։
* Եբր. պատուիրանքներուն պահպանութիւնը
ᶜ Թու. լբ. 33։ բ Օր. իթ. 8. Գլ. ժգ. 8։
ᵈ բ Օր. զ. 6. 17։ ժա. 22։
ᵉ բ Օր. ժ. 12։
ᶠ Ծն. խէ. 7։ Ել. լթ. 43։ Գլ. ժդ. 13։ բ Թագ. զ. 18։ Ղուկ. իդ. 50։
ᵍ Գլ. ժէ. 5։
ʰ Թու. լա. 27։ ա Թագ. լ. 14։
ⁱ Թու. լբ. 1. 26. 29։

ᵏ բ Օր. ժգ. 12. Ա. Դատ. ի. 12։
ˡ Դատ. ի. 1։
ᵐ բ Օր. ժգ. 14. Դատ. ի. 12։
ⁿ Ել. զ. 25։ Թու. իե. 7։
ᵒ Թու. ա. 4։
ᵖ Տես Ղև. ժէ. 8. 9. բ Օր. ժբ. 13. 14։
ᑫ Թու. իե. 3. 4. բ Օր. դ. 3։
ʳ Թու. ժզ. 22։
ˢ Գլ. ժը. 1։
ᵗ Գլ. է. 1. 5։
† Կամ՝ Աստուածներուն Աստուածը Եհովան է , աստուածներուն Աստուածը Եհովան է . բ Օր. ժ. 17։
ᵘ գ Թագ. ը. 39։ Յոբ. ժ. 7։ իգ. 10։ Սաղ. խդ. 21։ Եբր. 1. 2։ Երեմ. ժբ. 3։ բ Կոր. ժա. 11. 31։

Ն. Ք. ԴՔ.
1444

* Եբր. մի՛ ապրեցըներ.

ժբ Օր. ժը. 19։ աթագ. ի. 16։

Ն Ծն. լա. 48։ Գւ. ԻԴ. 27։ Հմր 34։
Ն բ Օր. ժբ. 5, 6, 11, 12 17, 18, 26, 27։

ո բ Օր. ժբ. 13, 14։

Ն Ղև. ԻԶ. 11. 12։ բ Մն. ԺԵ. 2։

Թող գիտնայ. Թէ որ բոնը
ապստամբութեան համար՝ կամ
Տէրոջը դէմ յանցանք գործելու
համար ըրինք, մեզ այսօր *չապրե-
23 ցընէ. Թէ որ մեզի սեղան շինեցինք
Տէրոջմէ ետ դառնալու համար,
կամ անոր վրայ ողջակէզ ու հացի
ընծայ մատուցանելու համար, և
կամ անոր վրայ խաղաղութեան
զոհեր ընելու համար, Տէրը ինքը
24 վրէժխնդրութիւն ընէ։ Այլ մենք ասի-
կայ մեր վախուն շինեցինք. մտա-
ծելով որ դուցէ վաղը ձեր որդիքը
մեր որդւոցը խօսին՝ ու ըսեն Թէ՝
Դուք Իսրայէլի Տէր Աստուծոյն
25 հետ ի՞նչ ունիք. Ո՛վ Ռուբէնեանք
ու Գադեանք, Տէրը՝ մեր ու ձեր
մէջը Յորդանանը սահման դրաւ.
դուք Տէրոջմէ բնաւ բաժին չու-
նիք. և ձեր որդիքը մեր
որդւոցմէ Տէրոջը երկիւղը վերցը-
26 նեն. Աս պատճառաւ ըսինք. Հի-
մա մեզի մէկ սեղան մը շինենք,
բայց չէ Թէ ողջակէզի համար, ոչ
27 ալ զոհի համար, Այլ՝ որպէս զի
անիկայ մեր ու ձեր մէջը՝ և մեզմէ
ետքը մեր սերունդներուն մէջը վը-
կայութիւն ըլլայ, որ մեր ողջա-
կէզներովը, մեր պատարագներովը
ու մեր խաղաղութեան զոհերովը՝
Տէրոջը ծառայութիւնը՝ Անոր առ-
ջևը ընենք, ու վաղը ձեր որդիքը
մեր որդւոցը չըսեն Թէ՝ Դուք Տէ-
28 րոջմէ բաժին չունիք։ Ու ըսինք,
Թէ որ մեզի կամ մեր սերունդին
վաղը բոնը ըսելու ըլլան, պիտի
ըսենք Թէ՝ Տեսէ՛ք Տէրոջը սեղանին
օրինակը՝ որն որ մեր հայրերը շինե-
ցին, չէ Թէ ողջակէզի համար կամ
զոհի համար, հապա մեր ու ձեր
մէջը վկայութիւն մը ըլլալու հա-
29 մար։ Քաւ լիցի՝ որ մենք Տէրոջմէ
ապստամբինք, ու այսօր Տէրոջմէ
ետ դառնալով, խորանին առջևը
եղող մեր Տէր Աստուծոյն սեղանէն
'ի զատ՝ ողջակէզի համար, հացի
ընծայի համար և զոհի համար սե-
ղան շինենք։
30 Ու երբոր Փենէհէս քահանան և
անոր հետ եղող ժողովքին իշխան-
ները, ու Իսրայէլին հազարապետ-
ները՝ Ռուբէնի որդւոցը, Գադի
որդւոցը ու Մանասէի որդւոցը ը-
սած խօսքերը լսեցին, իրենց հաճոյ
31 երևցաւ. Ու Եղիազարին որդին
Փենէհէս քահանան՝ Ռուբէնի որ-
դւոցը, Գաթի որդւոցը ու Մանա-
սէի որդւոցը ըսաւ. Այսօր գիտ-
ցանք որ Տէրը մեր մէջն է. որով-
հետև դուք Տէրոջը դէմ աս յան-
ցանքը չգործեցիք, և Իսրայէլի որ-
դիքը Տէրոջը ձեռքէն ազատեցիք։
32 Այսպէս Եղիազարին որդին Փե-
նէհէս քահանան և իշխանները՝
Ռուբէնի որդւոցը ու Գադի որ-
դւոցը քովէն՝ Գաղաադու երկրէն՝
Քանանու երկիրը Իսրայէլի որդւո-
ցը դարձան, և անոնց լուր բերին։
33 Ու աս խօսքը՝ Իսրայէլի որդւոցը
հաճոյ երևցաւ, և Իսրայէլի որդի-
քը զԱստուած օրհնեցին, ու Ռու-
բէնի որդւոցը և Գադի որդւոցը
բնակած երկիրը կործանելու հա-
մար՝ անոնց վրայ երթանք պատե-
34 րազմինք՝ չըսին։ Եւ Ռուբէնի որ-
դիքը ու Գադի որդիքը՝ ան սեղա-
նին անունը Եղ. դրին.
որովհետև ըսին. Անիկայ մեր մէջը
վկայ է, որ Տէր Աստուածը Եհովան
է։

Ն. Ք. ԴՔ.
1444

ղ աՄն. ԻԹ. 20։ Նեեմ. ը. 6։ Դան. բ. 19։ Ղուկ. բ. 28։

Գւ. ԻԳ. 27։

## ԳԼ. ԻԳ

1 Յեսու իր մեռնելէն առաջ՝ կը յորդորէ Իսրա-
յէլացիները. 3 յիշելով Աստուծոյ բոլոր բա-
րերարութիւնները, 5 և խոստմունքները, 11
ու սպառնալիքները։

1 Ու շատ օրերէն ետքը՝ որ Տէրը
հանգստացուցեր էր Իսրայէլը
անոր բոլորտիքը եղած ամէն Թըշ-
նամիներէն, Յեսու ծերացած ու
2 տարիքը առած էր։ Եւ Յեսու
կանչեց բոլոր Իսրայէլը, անոր ծե-
րերը՝ իշխանները՝ դատաւորները՝
ու ոստիկանները, և անոնց ըսաւ.
3 Ես ծերացայ տարիքս առի. Եւ
դուք տեսաք ան ամէնը, որ ձեր
Տէր Աստուածը ձեր առջևը ըրաւ
աս բոլոր ազգերուն. քանզի ձեր
Տէր Աստուածը ինքը ձեզի համար
4 պատերազմ ըրաւ։ Նայեցէք, ես
ձեզի՝ աս մնացած ազգերը վիճակով
ժառանգութիւն բաժնեցի ձեր ցե-
ղերուն համեմատ, Յորդանանէն՝
իմ կոտրած բոլոր ազգերովս մէկ-
տեղ մինչև մեծ ծովը դէպ 'ի արև-
5 մուտք։ Եւ ձեր Տէր Աստուածը
ինքը ձեր առջևէն պիտի հալածէ
զանոնք, ու պիտի վռընտէ, և ա-
նոնց երկիրը դուք պիտի ժառան-
գէք, ինչպէս որ ձեր Տէր Աս-
6 տուածը ձեզի ըսաւ։ Ուստի խիստ
ժիր եղէք, որ Մովսէսին օրինաց
գրքին մէջը գրուած բոլոր բաները
զգուշութեամբ 'ի գործ դնէք, ու
անկէ աջ կողմը կամ ձախ կողմը
7 չխոտորիք. Որպէս զի ձեր քովը
մնացած աս ազգերուն հետ չը-
խառնուիք", ու անոնց աստուած-
ներուն անունները չյիշէք, և ա-
նոնցմով երդում չընէք, ու անոնց
8 երկրպագութիւն չընէք. Հապա
ձեր Տէր Աստուծոյն յարիք, ինչ-
9 պէս որ մինչև աս օրս ըրիք։ Եւ
Տէրը ձեր առջևէն մեծ ու զօրաւոր
ազգեր վռընտեց, ու մինչև աս օրս
բնաւ մէկը չկրցաւ ձեզի դէմ դնել։
10 Ձեզմէ մէկը՝ անոնց հազարը պիտի

իբր 1427

Գւ. ԻԱ. 44։ ԻԲ. 4։
Գւ. ԺԴ. 1։
բ Օր. ԼԱ. 28։ Գւ. ԻԴ. 1։ աՄն. ԻԲ. 1։
Ել. ԺԴ. 14։ Գւ. Ժ. 14, 42։
Գւ. ԺԴ. 2, 6։ ԺԸ. 10։
Ել. ԻԴ. 30։ ԼԴ. 2։ ԼԴ. 11։ բ Օր. ԺԱ. 23։ Գւ. ԺԴ. 6։
Թու. ԼԴ. 53։
Գւ. Ա. 7։
բ Օր. Ե. 32։ ԻԸ. 14։
Ել. ԻԴ. 33։ բ Օր. Է. 2, 3։ Առակ. Դ. 14։ Եփե. Ե. 11։
† Եբր. մէջը չմտնէք։
Ել. ԻԳ. 13։ Սաղ. ԺԶ. 4։ Երեմ. Ե. 7։ Սոփ. Ա. 5։ Տես Թու. ԼԲ. 38։
բ Օր. Ժ. 20։ ԺԱ. 22։ ԺԳ. 4։ Գւ. ԻԲ. 5։
բ Օր. ... 23։
Գւ. Ա. 5։
Ղև. ԻԶ. 8։ բ Օր. ԼԲ. 30։ Տես Դատ. Գ. 31։ ԺԵ. 15։ բ Թագ. ԻԳ. 8։

Ն. Ք. Գք. իրր 1427

ա Ել. ժգ. 14. իգ. 27. բ Օր. գ. 22.
յ Գւ. իբ. 5.
ւ Եբր. ժ. 38. 39. բ Պետ. բ. 20. 21.
ճ բ Օր. է. 3.
մ Դատ. բ. 3.
յ Ել. իգ. 33. Թու. լգ. 55. բ Օր. է. 16. գ Թագ. ժա. 4.
ն գ Թագ. բ. 2. Տես Եբր. ժ. 27.
շ Գւ. իա. 45. Ղու. իա. 33.
ո բ Օր. իը. 63.
չ Ղև. իզ. 16. բ Օր. իը. 15. 16.

հալածէ. քանզի ձեր Տէր Աստուա-
ծը ինքը ձեզի համար կը պատե-
րազմի, ինչպէս որ ձեզի ըսաւ։
11 Ուստի ձեր անձերուն աղէկ
զգուշութիւն ըրէք, որ ձեր Տէր
12 Աստուածը սիրէք։ Բայց թէ որ
անկէ դառնալու ըլլաք, ու ձեր
քովը մնացած աս ազգերուն մնա-
ցորդին յարիք, և անոնց հետ
խնամութիւն ընէք, ու դուք ա-
նոնց հետ խառնուիք, և անոնք ալ
13 ձեզի հետ, Ստոյգ գիտցէք որ
ձեր Տէր Աստուածը ասկէ ետքը ալ
աս ազգերը ձեր առջևէն պիտի
չվռընտէ. Հապա անոնք ձեզի ո-
րոգայթ ու գայթակղութիւն պի-
տի ըլլան, և ձեր կողերուն խթան-
ներ, ու ձեր աչքերուն փուշեր,
մինչև որ բնաջինջ ըլլաք աս բարի
երկրին վրայէն, որն որ ձեր Տէր
14 Աստուածը ձեզի տուաւ։ Եւ ահա
ես այսօր ամէն երկրին ճամբան
կ'երթամ, ու դուք ձեր բոլոր սըր-
տովը ու բոլոր հոգիովը գիտնաք
որ ձեր Տէր Աստուածը ձեզի համար
որչափ բարի խօսքեր որ ըսաւ, ա-
նոնցմէ բան մը չպակսեցաւ. անոնց
ամէնն ալ ձեր վրայ կատարուեցաւ.
անոնցմէ բնաւ մէկ խօսք մը գետի-
15 նը չինկաւ։ Ու ինչպէս որ ձեր
Տէր Աստուծոյն ձեզի համար ըրած
ամէն բարի խօսքերը ձեր վրայ կա-
տարուեցաւ, նոյնպէս ալ Տէրը
ամէն չար խօսքերը ձեր վրայ պի-
տի բերէ, մինչև որ բնաջինջ ընէ
ձեզ աս բարի երկրին վրայէն, որն
որ ձեր Տէր Աստուածը ձեզի
16 տուաւ։ Թէ որ ձեր Տէր Աստու-
ծոյն ձեզի պատուիրած ուխտը
զանց ընէք, ու երթաք օտար աս-
տուածները պաշտէք, և անոնց
երկրպագութիւն ընէք, Տէրոջը
բարկութիւնը ձեր վրայ պիտի բոր-
բոքի, ու ան ձեզի տուած բարի
երկրին վրայէն շուտով պիտի կոր-
սուիք։

## ԳԼ. ԻԴ

1 Յեսու՝ Իսրայէլի բոլոր ցեղերը Սիւքեմի մէջ կը ժողվէ. 2 Թարայէն սկսելով՝ համառօտա-բար կը պատմէ Աստուծոյ բարերարութիւն-ները. 14 և անոնց՝ ու Աստուծոյ մէջտեղը եղած ուխտը կը նորոգէ։ 26 Ան ուխտին վկա-յութիւն ըլլալու քարը. 29 Յեսուին տարի-քը. մահը և թաղումը. 32 Յովսէփին ոսկոր-ներուն թաղումը. 33 Եղիազար քահանային մահը։

1 Յու Յեսու Իսրայէլին ամէն ցեղերը
Սիւքեմի մէջ ժողվեց, ու Իս-
րայէլի ծերերը, իշխանները, դա-
տաւորները և ոստիկանները կան-
չեց. ու անոնք Աստուծոյ առջևը
2 կայնեցան։ Եւ Յեսու բոլոր ժո-
ղովուրդին ըսաւ. Իսրայէլին Տէր
Աստուածը այսպէս կ'ըսէ. Առաջ

ա Ծն. լե. 4.
բ Գլ. իգ. 2.
գ ա Թագ. ժ. 19.
դ Ծն. ժա. 26. 31.

ձեր հայրերը՝ Աբրահամին հայրը ու
Նաքովրին հայրը Թարան՝ Գետին
անդին կողմը բնակեցան, և օտար
3 աստուածներ պաշտեցին։ Ու ես
ձեր հայրը Աբրահամը՝ Գետին ան-
դին կողմէն առի, ու զանիկայ Քա-
նանու բոլոր երկրին մէջը պտըտցու-
ցի, և անոր սերունդը շատցուցի,
4 ու Իսահակը անոր տուի. Եւ Իսա-
հակին՝ Յակոբը ու Եսաւը տուի.
ու Եսաւին Սէիր լեռը ժառանգու-
թիւն տուի. և Յակոբը ու անոր
5 որդիքը Եգիպտոս իջան։ Եւ Մով-
սէսը ու Ահարոնը խրկելով՝ Ե-
գիպտոսը զարկի, (ինչպէս որ անոր
մէջը ըրի,) ետքը ձեզ հանեցի։
6 Ուստի ես ձեր հայրերը Եգիպ-
տոսէն հանեցի, և դուք ծովը ե-
կաք. ու Եգիպտացիները կառքե-
րով ու ձիաւորներով մինչև Կար-
միր ծովը ձեր հայրերուն ետևէն ին-
7 կան։ Ան ատենը անոնք Տէրոջը
աղաղակեցին, և անիկայ ձեր ու
Եգիպտացւոց մէջտեղը խաւար ձը-
գեց, ու ծովը անոնց վրայ բերե-
լով՝ զանոնք ծածկեց. և ձեր աչ-
քերը՝ Եգիպտոսի մէջ ըրած բա-
ներս տեսան. ու շատ ժամանակ
8 անապատին մէջը բնակեցաք։ Ետ-
քը ձեզ բերի Յորդանանու անդին
կողմը բնակող Ամորհացւոց երկի-
րը. ու ձեզի հետ պատերազմ ը-
րին. և զանոնք ձեր ձեռքը տուի,
ու անոնց երկիրը ժառանգեցիք. և
զանոնք ձեր առջևէն բնաջինջ ըրի։
9 Ետքը Մովաբի թագաւորը՝ Սեպ-
փորեան Բաղակը ելաւ, ու Իսրա-
յէլին դէմ պատերազմ ըրաւ, և
մարդ խրկեց Բէովրեան Բաղաամը
10 կանչելու, որ ձեզ նզովէ. Բայց
չուզեցի Բաղաամին մտիկ ընել.
ու անիկայ ձեզ բոլորովին օրհնեց,
և անոր ձեռքէն ձեզ ազատեցի։
11 Ետքը Յորդանանէն անցնելով Ե-
րիքովը եկաք, ու Երիքովի բնա-
կիչները՝ Ամորհացիները՝ Փերեզա-
ցիները՝ Քանանացիները՝ Քետա-
ցիները՝ Գերգեսացիները՝ Խևացի-
ները ու Յեբուսացիները ձեզի դէմ
պատերազմ ըրին, ու զանոնք ձեր
12 ձեռքը տուի. Եւ ձեր առջևէն ի-
շամնղուները խրկեցի, որ զանոնք՝
այսինքն Ամորհացւոց երկու թա-
գաւորները ձեր առջևէն վռընտե-
ցին. ոչ քու սրովդ և ոչ քու
13 աղեղովդ վռնտուեցան. Ու ձեզի
մէկ երկիր մը տուի, որ դուք անոր
մէջը չաշխատեցաք, և քաղաքներ՝
որ դուք չշինեցիք, ու անոնց մէջը
կը բնակիք. և կ'ուտէք ան այգի-
ներէն ու ձիթենիներէն, որ դուք
չտնկեցիք։
14 Ուստի հիմա դուք Տէրոջմէն

Ն. Ք. Գք. իրր 1427

* Յ՝ Եփրա-տին
ե Ծն. լա. 53.
զ Ծն. ժբ. 1. Գոր. է. 2. 3.
է Ծն. իա. 2. 3. Սաղ. ճիէ. 8
ը Ծն. իե. 24. 25. 26.
թ Ծն. լզ. 8.
ժ Ծն. խզ. 1. 6. Գոր. է. 15.
ի Ել. դ. 10.
լ Ել. է. ը. թ. ժ. ժբ.
խ Ել. ժբ. 37. 51.
ծ Ել. ժդ. 2.
կ Ել. ժդ. 9.
հ Ել. ժդ. 10.
ձ Ել. ժդ. 20.
ղ Ել. ժդ. 27. 28.
ճ բ Օր. դ. 34. իթ. 2.
մ Գլ. ե. 6.
յ Թու. իա. 21. 33. բ Օր. բ. 32. գ. 1.
ն Տես Դատ. ժա. 25.
շ Թու. իբ. 5. բ Օր. իգ. 4.
ո բ Օր. իգ. 5.
չ Թու. իգ. 11. 20. իդ. 10.
պ Գլ. գ. 14. 17. դ. 10. 11. 12.
ջ Գլ. զ. 1. ժ. 1. ժա. 1.
ռ Ել. իգ. 28. բ Օր. է. 20.
ս Սաղ. խդ. 3. 6.
վ բ Օր. զ. 10. 11. Գլ. ժա. 13.
տ բ Օր. ժ. 12. ա Թագ. ժբ. 24.

Ն. Ք. Գ. Ք.
Իրր 1427

վախցէ՛ք, և անոր ըՀաւատարմու-
թեամբ ու ճշմարտութեամբ ծա-
ռայութիւն ըրէք, և յան աս-
տուածները՝ որոնց ձեր հայրերը
գետին անդին կողմը ու –Եգիպ-
տոսի մէջ ծառայութիւն ըրին,
մէկդի ձգեցէք, և Տէրը պաշտե-
15 ցէք ։ Բայց թէ որ Տէրոջը ծա-
ռայութիւն ընելը՝ ձեզի հաճոյ
չերեւնար, ‡ձեզի ընտրեցէք այսօր
թէ ո՛վ պիտի պաշտէք, +գետին
անդին կողմը ձեր հայրերուն պաշ-
տած աստուածնե՞րը, թէ °Ամոր-
հացւոց աստուածները որ դուք ա-
նոնց երկրին մէջը կը բնակիք.
$բայց ես ու իմ տունս Եհովան
պիտի պաշտենք ։
16 Եւ ժողովուրդը պատասխան
տուաւ՝ ու ըսաւ. Քա՛ւ լիցի, որ
մենք Եհովան թողունք և ուրիշ
17 աստուածներ պաշտենք. Քանզի
*Եհովան ինքն է մեր Աստուածը",
որ մեզ ու մեր հայրերը Եգիպտոսի
երկրէն՝ ծառայութեան տունէն
հանեց, և ինքը մեր աչքերուն առ-
ջեւ այս մեծ նշանները ըրաւ, ու
մեզ պահեց մեր ամէն գացած ճամ-
բուն մէջը՝ և ամէն ազգերուն մէջը,
18 որոնց մէջէն որ անցանք ։ Ու Եհո-
վան բոլոր ազգերը՝ ու այս երկրիս
մէջ բնակող Ամորհացիները մեր
առջեւէն վռնտեց. մենք ալ Եհո-
վան պիտի պաշտենք, որովհետեւ
մեր Աստուածը ինքն է ։
19 Եւ Յեսու ժողովուրդին ըսաւ.
–Դուք չէք կրնար Եհովան պաշ-
տել. քանզի անիկայ բսուրբ Աս-
տուած է. ու անիկայ ՔՆախանձոտ
Աստուած ըլլալով՝ Տձեր յան-
ցանքները ու մեղքերը չներեր ։
20 Քանզի Խերբոր Եհովան թողուք՝
ու օտար աստուածները պաշտէք,
Ղան ատենը պիտի դառնայ, ու ձե-
զի բարիք †ընելուն տեղը" ձեզ
չարչարելով բնաջինջ պիտի ընէ ։
21 Եւ ժողովուրդը Յեսուին ըսաւ.
Չէ՛. հապա մենք Եհովան պիտի
պաշտենք ։
22 Ու Յեսու ժողովուրդին ըսաւ.
Դուք ձեր անձանցը վկայ էք, որ
Խդուք ձեզի Եհովան ընտրեցիք՝
զանիկայ պաշտելու համար. (ու
23 անոնք ըսին. Վկայ ենք.) Ուրեմն
հիմա ըձեր մէջը եղած օտար աս-
տուածները վերցուցէ՛ք, և ձեր
սիրտը Իսրայէլի Տէր Աստուծոյն
24 դարձուցէք ։ Ու ժողովուրդը Յե-
սուին ըսաւ. Մենք մեր Տէր Աս-
տուածը պիտի պաշտենք, ու ա-
նոր խօսքը մտիկ ընենք ։
25 Եւ նոյն օրը Յեսու Րժողովուր-
դին հետ ուխտ ըրաւ, ու ԺՍիւքե-
մի մէջ անոր կանոն ու դատաստան
26 դրաւ ։ Եւ Յեսու Էաս խօսքերը՝
Աստուծոյ օրինաց գրքին մէջը գը-
րեց, ու Լմէկ մեծ քար մը առաւ,
և զանիկայ Տէրոջը սրբարանին մէ-
ջը եղած Խբեւեկնիին տակը Ծկանգ-
27 նեց ։ Ու Յեսու բոլոր ժողովուր-
դին ըսաւ. Ահա՛ աս քարը Կմեզի
վկայ ըլլայ. քանզի Հասիկայ Տէրո-
ջը մեզի հետ խօսած բոլոր խօսքերը
լսեց. ուստի ասիկայ ձեզի վկայ
ըլլայ, որ չըլլայ թէ ձեր Աստուա-
28 ծը ուրանաք ։ Ետքը ՅՅեսու ժո-
ղովուրդը արձակեց. ամէն մարդ
իր ժառանգութեանը գնաց ։
29 ՆԵւ աս բաներէն ետքը՝ Տէրոջը
ծառան Նաւեան Յեսուն մեռաւ,
հարիւր տասը տարեկան ըլլալով.
30 Ու զանիկայ՝ իր ժառանգութեանը
սահմանին մէջը՝ Գաաս լեռանը
հիւսիսային կողմը՝ Եփրեմի լեռը՝
ԶԹամնաթ Սարային մէջը թաղե-
ցին ։
31 Եւ Յեսուին բոլոր օրերուն մէջը,
ու Յեսուէն ետքը ողջ մնացող՝ և
ՄԻսրայէլի համար Տէրոջը ըրած ա-
մէն գործքերը գիտցող ծերերուն
բոլոր օրերուն մէջը՝ ՅԻսրայէլը Տէ-
րոջը ծառայութիւն ըրաւ ։
32 Եւ ՇՅովսէփին ոսկորները՝ որ
Իսրայէլի որդիքը Եգիպտոսէն հա-
ներ էին, Սիւքեմի մէջ թաղե-
ցին՝ ագարակին ան մասին մէջ,
Նորն որ Յակոբ՝ Սիւքեմի հօրը Ե-
մովրին որդիներէն հարիւր ‡կտոր
արծաթի" ծախու առեր էր. ու
անիկայ՝ Յովսէփի որդւոցը ժա-
ռանգութիւնը եղաւ ։
33 Ահարոնի որդին Եղիազարն ալ
մեռաւ, ու զանիկայ՝ Եփրեմի լեռը՝
անոր որդւոյն ԵՓենէհեսին տրուած
բլուրին վրայ թաղեցին ։

ր Ծն. ԺԷ. 1. Ի. 5. բ Օր. ԺԸ. 13. Սաղ. ՃԺԹ. 1. բ Կոր. Ա. 12. Եփե. Զ. 24.
յ Հմր 2. 23. Ղև. ԺԷ. 7. Եզեկ. Ի. 18.
– Եզեկ. Ի. 7. 8. Իգ. 8.
‡ Տես Հռութ. Ա. 15. Գ Թագ. ԺԸ. 21. Եզեկ. Ի. 39. Յով. Զ. 67.
+ Հմր 14.
° Ել. Իգ. 24. 32. 33. Լդ. 15. բ Օր. Ժզ. 7. Իթ. 18. Դատ. Զ. 10.
$ Ծն. ԺԸ. 19.
* Կամ՝ մեր Եհովայ Աստուածը ինքն է.
– Մատ. Զ. 24.
բ Ղև. ԺԹ. 2. Ա Թագ. Զ. 20. Սաղ. ՂԹ. 5, 9. Ես. Ե. 16.
Ք Ել. Ի. 5.
Տ Ել. Իգ. 21.
Խ ա Մն. Իը. 9. բ Մն. ԺԵ. 2. Եզր. Ը. 22. Ես. Ա. 28. Կե. 11. 12. Երեմ. ԺԷ. 13.
Ղ Գւ. Իգ. 15. Ես. Կգ. 10. Գոր. Է. 42.
† Եբր. ընելէն ետքը՝
Խ Սաղ. ՃԺԹ. 173.

Ն. Ք. Գ. Ք.
Իրր 1427

Ը Հմր 14. Ծն. Լե. 2. Դատ. Ժ. 16. Ա Թագ. Է. 3.
Ր Տես Ել. ԺԵ. 25. Դ Թագ. ԺԱ. 17.
Ժ Հմր 26.
Է բ Օր. Լա. 24.
Լ Տես Դատ. Թ. 6.
Խ Ծն. ԼԵ. 4.
Ծ Տես Ծն. Իը. 18. Գւ. Դ. 3.
Կ Տես Ծն. Լա. 48. 52. բ Օր. Լա. 19. 21. 26. Գւ. Իբ. 27. 28. 34.
Հ բ Օր. Լբ. 1.

Իրր 1426

Յ Դատ. Բ. 6.
Ն Դատ. Բ. 8.
Զ Գւ. ԺԹ. 50. Դատ. Բ. 9.
Մ Տես բ Օր. Ժա. 2. Լա. 13.
Յ Դատ. Բ. 7.
Շ Ծն. Ծ. 25. Ել. Ժգ. 19.
Ն Ծն. Լգ. 19.
‡ Կամ՝ գառնուկի

Իրր 1420

Ե Ել. Զ. 25. Դատ. Ի. 28.

# ԳԻՐՔ ԴԱՏԱՒՈՐԱՑ

Ն․ Ք․ ՉՔ․
Իրր 1425

## ԳԼՈՒԽ Ա

1 Յուդայի ու Շմաւոնի ցեղերուն գործքերը ։ 4 Ադոնիբեզեկ իրաւունքով կը պատժուի ։ 8 Երուսաղէմը կ'առնուի ։ 10 Քեբրոնը կ'առնուի ։ 11 Գոթոնիէլ՝ Դաբիրը առնելուն համար, Աքսան իրեն կնութեան կը տրուի ։ 16 Կենեցիները Յուդայի հետ կը բնակին ։ 17 Հորման, Գազան, Ասկաղոնը ու Ակկարոնը կ'առնուին ։ 21 Բենիամինեանց գործքերը ։ 22 Յովսեփի որդիքը Բեթէլը կ'առնեն ։ 30 Զաբուղոնի, 31 Ասերի, 33 Նեփթաղիմի, 34 ու Դանի ցեղերուն գործքերը ։

1 Եւ Յեսուին մեռնելէն ետքը՝ Իս-
րայէլի որդիքը ᵃՏէրոջը հար-
ցուցին, ու ըսին. Մեզի համար՝
Քանանացւոց վրայ առաջ ո՞վ ելլէ՝
2 անոնց հետ պատերազմելու ։ Եւ
Տէրը ըսաւ. ᵇՅուդան թող ելլէ.
ահա երկիրը անոր ձեռքը տուի ։
3 Եւ Յուդա՝ իր եղբօրը Շմաւոնին
ըսաւ. Ինծի հետ իմ վիճակս ելիր,
ու Քանանացւոց հետ պատերազ-
մինք, և ᶜես ալ քեզի հետ քու վի-
ճակդ երթամ. ու Շմաւոն անոր
4 հետը գնաց ։ Եւ Յուդա ելաւ, ու
Տէրը՝ Քանանացիները ու Փերեզա-
ցիները անոնց ձեռքը տուաւ. ու
անոնցմէ ᵈԲեզեկի մէջ տասը հա-
5 զար մարդ կոտորեցին ։ Եւ Բեզեկի
մէջ Ադոնիբեզեկը գտնելով՝ անոր
հետ պատերազմեցան, ու Քանա-
նացիները և Փերեզացիները զար-
6 կին ։ Եւ Ադոնիբեզեկը փախաւ.
բայց անոնք անոր ետեւէն իյնալով՝
զանիկայ բռնեցին, ու անոր ձեռ-
քերուն ու ոտքերուն մեծ մատերը
7 կտրեցին ։ Եւ Ադոնիբեզեկ ըսաւ.
Ձեռքերնուն ու ոտքերնուն մեծ
մատերը կտրած եօթանասուն թա-
գաւորներ՝ իմ սեղանիս տակը փշրան-
քները կը ժողվէին. ᵉԵս ինչ-
պէս որ ըրի, Աստուած ալ ինծի
այնպէս հատուցում ըրաւ ։ Եւ
զանիկայ Երուսաղէմ տարին, ու
հոն մեռաւ ։
8 Եւ ᶠՅուդայի որդիքը Երուսա-
ղէմի հետ պատերազմ ընելով՝ զա-
նիկայ առին, ու սուրի բերնէ ան-
ցընելով՝ քաղաքը կրակով այրե-
ցին ։
9 ᵍԱնկէ ետև Յուդայի որդիքը
վար իջան, որ լեռնակողմը՝ ու
հարաւային կողմը՝ ու դաշտի մէջ
բնակող Քանանացւոց դէմ պա-
10 տերազմին ։ Եւ Յուդա՝ Քեբրո-
նի մէջ բնակող Քանանացինե-
րուն վրայ գնաց. (ու Քեբրո-
նին անունը առաջուց ʰԿարիաթ
արբա էր.) և անոնք Սէ-
սին, Աքիմանը ու Թոլմին զար-
11 կին ։ ⁱԵւ անկէ Դաբիրի բնակ-
չացը վրայ գնաց. (ու Դաբիրին
անունը առաջուց Կարիաթ սեփեր
12 էր.) ʲԵւ Քաղէբ ըսաւ. Ով որ
Կարիաթ սեփերը զարնէ ու առնէ,
իմ աղջիկս Աքսան անոր կնու-
13 թեան պիտի տամ ։ Ուստի ᵏՔա-
ղէբին պզտիկ եղբօրը Կենեզին որ-
դին Գոթոնիէլը զօրքով առաւ զա-
նիկայ. և Քաղէբ իր աղջիկը Աք-
14 սան անոր կնութեան տուաւ ։ ˡՈւ
երբոր աղջիկը անոր կ'երթար, զա-
նիկայ յորդորեց որ իր հօրմէն ա-
գարակ մը ուզէ. և էշէն վար
իջաւ. ու Քաղէբ ըսաւ անոր.
15 Քեզի ի՞նչ եղաւ ։ Եւ աղջիկը
անոր ըսաւ. ᵐԻնծի օրհնութիւն
տուր. որովհետև ինծի հարաւային
երկիր մը տուիր, ինծի ջուրի աղ-
բիւրներ ալ տուր ։ Ուստի Քաղէբ
վերի աղբիւրները ու վարի աղբիւր-
ները տուաւ անոր ։
16 ⁿԵւ Մովսէսին աներոջը Կենե-
ցիին որդիքը՝ Յուդայի որդւոցը
հետ Արմաւենեաց քաղաքէն՝ ᵒԱ-
րադի հարաւային կողմը եղող Յու-
դայի անապատը ելան, ու գացին
ժողովուրդին հետ բնակեցան ։
17 Եւ Յուդա իր եղբօրը Շմաւո-
նին հետ գնաց. ու Սեփաթի մէջ
բնակող Քանանացիները զարկին,
և զանիկայ նզովեցին, ու անոր քա-
ղաքին անունը *Հորմա կոչեցին ։
18 Ետքը Յուդայեանք՝ Գազան ու
անոր սահմանը, և Ասկաղոնը ու
անոր սահմանը, և Ակկարոնը ու
19 անոր սահմանը առին ։ Եւ Տէրը
Յուդային հետն էր, ու անիկայ լե-
ռանը տիրեց. բայց հովիտներուն
բնակիչները չկրցաւ վռնտել,
քանզի անոնք երկաթէ կառքեր
20 ունէին ։ Ու Քեբրոնը Քաղէբին
տուին, ինչպէս որ Մովսէս ըսեր
էր. ու անկէ Ենակին իրեք որդի-
ները վռնտեց ։
21 Եւ Բենիամինի որդիքը՝ Երու-

ա Թիւ․ ԻԷ․ 21։ Գլ․ Ի․ 18։
բ Ծն․ ԽԹ․ 8։
գ Հմր 17։
դ Ա Թագ․ ԺԱ․ 8։
ե Ղև․ ԻԴ․ 19։ Ա Թագ․ ԺԵ․ 33։ Յակ․ Բ․ 13։
զ Տե՛ս Յես․ ԺԵ․ 63։
է Յես․ Ժ․ 36։ ԺԱ․ 21։ ԺԵ․ 13։
ը Յես․ ԺԴ․ 15։ ԺԵ․ 13, 14։
թ Յես․ ԺԵ․ 15։
1444
ժ Յես․ ԺԵ․ 16, 17։
ի Գլ․ Գ․ 9։
լ Յես․ ԺԵ․ 18, 19։
խ Ծն․ ԼԳ․ 11։
ծ Գլ․ Դ․ 11, 17։ Ա Թագ․ ԺԵ․ 6։ Ա Մն․ Բ․ 55։ Երեմ․ ԼԵ․ 2։
Իրր 1425
կ Բ Օր․ ԼԴ․ 3։
հ Թիւ․ ԻԱ․ 1։
ձ Թիւ․ Ժ․ 32։
ղ Հմր 3։
ճ Թիւ․ ԻԱ․ 3։ Յես․ ԺԹ․ 4։
* Տ՛ Նզովք։
մ Յես․ ԺԱ․ 22։
յ Հմր 2։ Դ Թագ․ ԺԸ․ 7։
ն Յես․ ԺԷ․ 16, 18։
շ Թիւ․ ԺԴ․ 24։ Բ Օր․ Ա․ 36։ Յես․ ԺԴ․ 9, 13։ ԺԵ․ 13, 14։
ո Տե՛ս Յես․ ԺԵ․ 63։ ԺԸ․ 28։

Ն. Ք. Գ. Ք.
Իրր 1425

սաղէմի մէջ բնակող Յեբուսացի-
ները չվռնտեցին . ու Յեբուսացիք
Բենիամինի որդւոցը հետ Երուսա-
ղէմի մէջ բնակեցան մինչև այս օրս ։
22 Եւ Յովսէփին տունն ալ Բե-
թէլի վրայ ելան . ու Տէրը անոնց
23 հետն էր ։ Եւ Յովսէփին տունը՝
Բեթէլը լրտեսեցին . (ու այն քա-
ղաքին անունը առաջուց Լուզ
24 էր .) Եւ պահապանները մարդ մը
տեսան որ այն քաղաքէն կ'ելլէր ,
ու անոր ըսին . Շնորհք ըրէ , քա-
ղաքը մտնելու կողմը մեզի ցու-
ցուր , ու քեզի ողորմութիւն կ'ը-
25 նենք ։ Եւ անիկայ՝ քաղաքը մտնե-
լու կողմը ցուցուց անոնց . ու քա-
ղաքը սուրի բերնէ անցուցին , բայց
այն մարդը և անոր բոլոր ազգատոհ-
26 մը թող տուին . Ու այն մարդը
Քետացւոց երկիրը գնաց , և հոն
մէկ քաղաք մը շինեց , ու անոր
անունը Լուզ կոչեց . և մինչև այս
օրս անոր անունը այս է ։
27 Ու Մանասէն՝ Բեթսանը և ա-
նոր գիւղաքաղաքները , Թանաքը
ու անոր գիւղաքաղաքները , Դովլ-
րի բնակիչները և անոր գիւղաքա-
ղաքները , Յեբղաամի բնակիչները
ու անոր գիւղաքաղաքները , Մա-
կեդդովի բնակիչները ու անոր գիւ-
ղաքաղաքները չվարկաւ . և Քա-
նանացիք կամակորութեամբ այս
28 երկրին մէջ բնակեցան ։ Ու երբոր
Իսրայէլը ուժովցաւ , Քանանացի-
ները հարկատու ըրաւ , բայց զա-
նոնք բոլորովին չվռնտեց ։
29 Եփրեմն ալ՝ Գազերի մէջ բնա-
կող Քանանացիները չվռնտեց . ու
Քանանացիք անոր հետ Գազերի
մէջ բնակեցան ։
30 Զաբուղոնը՝ Կետրոնի բնակիչ-
ները և Նաաղոլի բնակիչները չը-
վռնտեց . ու Քանանացիք անոնց
մէջը բնակելով , հարկատու եղան ։
31 Ասերը՝ Ակքովի բնակիչները , ու
Սիդոնի , Աբղաբի , Աքզիբի ,
Ելբայի , Ափեկի ու Ռոոբի բնա-
32 կիչները չվռնտեց . Հապա Ասե-
րեանք՝ այն երկիրը բնակող Քա-
նանացւոց մէջը բնակեցան , որով-
հետև զանոնք չվռնտեցին ։
33 Նեփթաղիմը՝ Բեթսամիւսի բը-
նակիչները ու Բեթանաթի բնա-
կիչները չվռնտեց . հապա այն եր-
կիրը բնակող Քանանացւոց մէջը
բնակեցաւ . և Բեթսամիւսին ու
Բեթանաթին բնակիչները անոր
հարկատու եղան ։
34 Եւ Ամորհացիք՝ Դանի որդիները
լեռան վրայ նեղը ձգեցին . քանզի
անոնց թող չտուին որ հովիտները
35 իջնեն ։ Ու Ամորհացիք կամակո-
րութեամբ Հարէս լեռը , Այեղո-

Հմր 19 ։
Յես. Բ. 1 ։ Է. 2 ։ Գլ. ԺԸ. 2 ։ Ծն. ԻԸ. 19 ։
Յես. Բ. 12 , 14 ։
Յես. ԺԷ. 11 , 12 , 13 ։
Յես. ԺԶ. 10 ։ Գ Թագ. Թ. 16 ։
Յես. ԺԹ. 15 ։
Յես. ԺԹ. 24—30 ։
Սաղ. ՃԶ. 34 , 35 ։
Յես. ԺԹ. 38 ։
Հմր 32 ։
Հմր 30 ։
Յես. ԺԹ. 42 ։

նի ու Սաղաբինի մէջ բնակեցան .
բայց երբոր Յովսէփին տանը ձեռքը
ուժովցաւ , անոնք հարկատու ե-
36 ղան ։ Եւ Ամորհացւոց սահմանը՝
Ակրաբիմի զառ 'ի վերէն՝ Վէմէն
'ի վեր էր ։

## ԳԼ. Բ

1 Հրեշտակ մը Բոքիմի մէջ ժողովուրդը կը յան-
դիմանէ ։ 6 Յեսուէն ետքը եկող նոր ազգին
ըրած չարութիւնը ։ 14 Աստուծոյ անոնց
վրայ բարկանալը ու գթալը ։ 20 Աստուած
Քանանացիներուն միջոցովը Իսրայէլը կը
փորձէ ։

1 Ու Տէրոջը հրեշտակը Գաղգաղա-
յէն Բոքիմը ելաւ , ու ըսաւ .
Ձեզ Եգիպտոսէն հանեցի , և ձեզ
այն երկիրը բերի , որուն համար ձեր
հայրերուն երդում ըրեր էի . ու
ըսի որ՝ Ձեզի հետ ըրած ուխտս
2 յաւիտեան պիտի չաւրեմ . Եւ
դուք այս երկրին բնակչացը հետ դաշ-
նակցութիւն մի՛ ընէք , անոնց
սեղանները փլցուցէք . բայց դուք
իմ խօսքիս հնազանդութիւն չը-
րիք . ինչո՞ւ համար այս բանը ը-
3 րիք ։ Ես ալ ըսի . Զանոնք ձեր
առջևէն պիտի չվռնտեմ , հապա
անոնք ձեզի թշնամի , ու անոնց
աստուածներն ալ ձեզի որոգայթ
4 պիտի ըլլան ։ Ու երբոր Տէրոջը
հրեշտակը՝ բոլոր Իսրայէլի որդւոցը
այս խօսքերը ըսաւ , ժողովուրդը
5 ձայնը վերցընելով՝ լացաւ ։ Եւ
այն տեղին անունը Բոքիմ կոչե-
ցին . ու հոն Տէրոջը զոհ մատու-
ցին ։
6 Ու երբոր Յեսու ժողովուրդը
արձակեց , Իսրայէլի որդիքը՝ ամէն
մէկը իր կալուածքը գնաց , երկիրը
7 ժառանգելու համար ։ Եւ ժողո-
վուրդը՝ Յեսուին բոլոր օրերուն
մէջ , ու Յեսուէն ետքը ողջ մնա-
ցող՝ և Իսրայէլի համար Տէրոջը ը-
րած ամէն մեծ գործքերը տեսնող
ծերերուն բոլոր օրերուն մէջ՝ Տէրո-
8 ջը ծառայութիւն ըրին ։ Եւ Տէ-
րոջը ծառան Յեսու Նաւեան՝ հա-
9 րիւր տասը տարեկան մեռաւ . Ու
զանիկայ իր ժառանգութեանը
սահմանին մէջ՝ Գաասա լեռանը
հիւսիսային կողմը՝ Եփրեմի լեռը
Թամնաթ հարեսին՝ մէջը թաղե-
10 ցին ։ Եւ այն դարուն բոլոր մարդիկ-
ները իրենց հայրերուն խառնուե-
ցան . ու անոնցմէ ետքը մէկ ուրիշ
ազգ մը ելաւ , որ Տէրը ու Իսրա-
յէլի համար անոր ըրած գործքերը
չճանչցան ։
11 Եւ Իսրայէլի որդիքը Տէրոջը առ-
ջևը չարութիւն ըրին , ու Բահա-
12 ղիմը պաշտեցին . Եւ թողուցին
իրենց հայրերուն Տէր Աստուածը ,
որ զիրենք Եգիպտոսի երկրէն հա-

Ն. Ք. Գ. Ք.
Իրր 1425
Թուոց ԼԴ. 4 ։ Յես. ԺԵ. 3 ։
Հմր 5 ։
Ծն. ԺԷ. 7 ։
Օր. Է. 2 ։ Օր. ԺԲ. 3 ։
Հմր 20 ։ Սաղ. ՃԶ. 34 ։
Յես. ԻԳ. 13 ։ Գլ. Գ. 6 ։ Ել. ԻԳ. 33 ։ ԼԴ. 12 ։ Բ Օր. Է. 16 ։ Սաղ. ՃԶ. 36 ։
Այսինքն՝ լացողներ ։
Յես. ԻԲ. 6 ։ ԻԴ. 28 ։
Իրր 1444
Յես. ԻԴ. 31 ։
Յես. ԻԴ. 29 ։
Յես. ԻԴ. 30 ։
Իրր 1426
Որ Յես. ԺԹ. 50 ԻԴ. 30 Կ'ըսուի Թամնաթսարա ։
Ել. Ե. 2 ։ Ա Թագ. Բ. 12 ։ Ա Մն. ԻԸ. 9 ։ Երեմ. Թ. 3 ։ ԻԲ. 16 ։ Գաղ. Դ. 8 ։ Բ Թես. Ա. 8 ։ Տիտ. Ա. 16 ։
Իրր 1406
Բ Օր. ԼԱ. 16 ։

Ն . Ք . ՂՔ . Իբր 1406

ներ էր , ու ˡօտար աստուածներու
ետևէ գացին , այսինքն իրենց բո-
լորտիքը եղող ազգաց տանէ մը աս-
տուածներուն , ու ʰանոնց երկըր-
պագութիւն ըրին , և Տէրը սրդող-
13 ցուցին ։ Ուստի Տէրը թողուցին ,
ⁱԲահաղը ու Աստարովթը պաշ-
14 տեցին ։ ʲԵւ Տէրոջը բարկութիւ-
նը Իսրայէլի վրայ բորբոքեցաւ , ու
ᵏզանոնք կողոպտիչներուն ձեռքը
մատնեց ։ ու զանոնք կողոպտեցին .
և ˡզանոնք շրջակայ թշնամիներուն
ծախեց , ու ալ ᵐչէին կրնար իրենց
15 թշնամեաց առջեւը կայնիլ ։ Ո՛ւր
որ երթային , Տէրոջը ձեռքը ա-
նոնց վրայ էր չարիք ընելու համար ,
ինչպէս որ Տէրը ըսեր էր , և ⁿինչ-
պէս որ անոնց երդում ըրեր էր .
ու խիստ մեծ նեղութեան մէջ
էին ։
16 Եւ ᵒՏէրը դատաւորներ հանեց ,
որոնք կողոպտիչներուն ձեռքէն ա-
17 զատեցին զանոնք ։ Սակայն իրենց
դատաւորներուն ալ մտիկ չըրին ,
ու ᵖօտար աստուածներու ետևէ
երթալով՝ պոռնկութիւն ըրին , ու
անոնց երկրպագութիւն ըրին .
շուտով խոտորեցան այն ճամբա-
յէն՝ որուն մէջը իրենց հայրերը կը
քալէին Տէրոջը հրամաններուն
հնազանդելով . բայց ասոնք այն-
18 պէս չըրին ։ Ու երբոր Տէրը ա-
նոնց դատաւորներ կը հանէր ,
ᵠՏէրը դատաւորին հետը ըլլա-
լով՝ դատաւորին բոլոր օրերը՝ զա-
նոնք իրենց թշնամիներուն ձեռքէն
կ՚ազատէր . քանզի անոնց նեղու-
թիւն տուողներուն ու չարչարող-
ներուն երեսէն անոնց հեծութիւն-
ներուն համար ʳՏէրը կը զղջար ։
19 Ու երբոր ˢԱն դատաւորը մեռնէր ,
կը դառնային նորէն օտար աս-
տուածներու ետևէ կ՚երթային ,
զանոնք կը պաշտէին , և անոնց եր-
կըրպագութիւն կ՚ընէին . ու իրենց
հայրերէն աւելի անօրէնութիւն
կ՚ընէին . իրենց չար գործքերէն , ու
իրենց *ծուռ ճամբայէն չէին դառ-
20 նար ։ ᵗՈւստի Տէրոջը բարկու-
թիւնը Իսրայէլի վրայ բորբոքելով՝
ըսաւ . Որովհետև աս ազգը՝ իրենց
հայրերուն պատուիրած ուխտս
ᵘզանց ընելով՝ իմ ձայնիս հնազան-
21 դութիւն չըրին , ᵛԵս ալ ասկէ
հետև անոնց առջևէն բնաւ մէկը
պիտի չվռնտեմ այն ազգերէն . ո-
րոնք Յեսու իր մեռած ատենը թո-
22 ղուց , ʷՈրպէս զի անոնցմով ˣԻս-
րայէլը փորձեմ , թէ արդեօք իրենց
հայրերուն պէս զգուշութիւն պի-
տի ընե՛ն Տէրոջը ճամբան քալելու .
23 թէ չէ ։ Ուստի Տէրը աս ազգերը
թողած էր , և շուտով չվռնտեց ,
ու զանոնք Յեսուին ձեռքը
չմատնեց ։

ˡԲ Օր . Զ . 14 ։
ʰԵւ . Ի . 5 ։
ⁱԳլ . Գ . 7 ։ Ժ . 6 ։ Սաղ . ՃԶ . 36 ։
ʲԳլ . Գ . Տ ։ Սաղ . ՃԶ . 40 ։ 41 ։ 42 ։
ᵏԴ Թագ . ԺԷ . 20 ։
ˡԳլ . Գ . 8 ։ Դ . 2 ։ Սաղ . ԽԶ . 12 ։ Եսա . Ծ . 1 ։
ᵐՂև . ԻԶ . 37 ։ Յես . Է . 12 . 13 ։
ⁿՂև . ԻԶ ։ Բ Օր . ԻԸ ։
ᵒԳլ . Գ . 9 ։ 10 ։ 15 ։ Ա Թագ . ԺԲ . 11 ։ Գոր . ԺԳ . 20 ։
ᵖԵլ . ԼԴ . 15 ։ 16 ։ Ղև . ԺԷ . 7 ։
ᵠՅես . Ա . 5 ։
ʳԾն . Զ . 6 ։ Բ Օր . ԼԲ . 36 ։ Սաղ . ՃԶ . 44 ։ 45 ։
ˢԳլ . Գ . 12 ։ Դ . 1 ։ Ը . 33 ։
*Եբր . կարծըր
ᵗՀմր 14 ։
ᵘՅես . ԻԳ . 16 ։
ᵛՅես . ԻԳ . 13 ։
ʷԳլ . Գ . 1 . 4 ։
ˣԲ Օր . Ը . 2 . 16 . ԺԳ . 3 ։

ԳԼ . Գ

1 Իսրայէլը փորձելու համար պահուած ազգե-
րը ։ 6 Իսրայէլը անոնց հետ հաղորդակցու-
թիւն ընելով՝ կռապաշտութիւն կ՚ընէ . 9
Գոթոնիէլ Քուսարսաթեմին ձեռքէն կ՚ա-
զատէ զանոնք . 15 և Աւովդ Եգղոնէն , 31 ու
Սամեգար՝ Փղշտացիներէն .

1 Ասոնք են ᵃայն ազգերը՝ որոնք
Տէրը թող տուաւ . որ անոնց-
մով Իսրայէլը՝ այսինքն Քանանա-
ցւոց բոլոր պատերազմները ամէն
2 չգիտցողները փորձէ . (Միայն ասոր
համար՝ որ Իսրայէլի որդւոցը սե-
րունդը՝ մանաւանդ առաջուց չը-
գիտցողները պատերազմ սորվին ու
3 գիտնան .) ᵇՓղշտացւոց հինգ նա-
խարարութիւնները , և բոլոր Քա-
նանացիները՝ ու Սիդոնացիները՝
Լիբանան լեռը բնակող Խևացինե-
րը՝ Բաաղհերմոն լեռնէն մինչև Ե-
4 մաթի մուտքը ։ ᶜԱսոնցմով պի-
տի փորձէր Իսրայէլը , որ գիտնայ
թէ արդեօք պիտի հնազանդին Տէ-
րոջը պատուիրանքներուն , որոնք
Մովսէսին ձեռքովը անոնց հայրե-
րուն հրամայեր էր ։
5 ᵈԵւ Իսրայէլի որդիքը՝ Քանա-
նացւոց՝ Քետացւոց՝ Ամորհացւոց՝
Փերեզացւոց՝ Խևացւոց ու Յեբու-
6 սացւոց մէջը բնակեցան . Եւ ᵉա-
նոնց աղջիկները իրենց կնիկ առին ,
ու իրենց աղջիկներն ալ անոնց տը-
ղոցը տուին , և անոնց աստուած-
7 ները պաշտեցին ։ ᶠՈւ Իսրայէլի
որդիքը՝ Տէրոջը առջևը չարու-
թիւն ըրին , և իրենց Տէր Աստուա-
ծը մոռնալով՝ ᵍԲահաղիմը ու
8 ʰ†Աստարովթը պաշտեցին ։ Եւ
Տէրոջը բարկութիւնը Իսրայէլի
վրայ բորբոքեցաւ , ու զանոնք
Միջագետքի ⁱՔուսարսաթեմ թա-
գաւորին ʲձեռքը մատնեց . և Իս-
րայէլի որդիքը ութը տարի ծառա-
յութիւն ըրին Քուսարսաթեմին ։
9 Եւ երբ Իսրայէլի որդիքը ᵏՏէրոջը
աղաղակեցին . ու Տէրը ˡԻսրայէլի
որդւոցը փրկիչ մը հանեց . Քաղե-
բին պզտիկ եղբօրը Կենեզին որդին
ᵐԳոթոնիէլը , որ զանոնք ազա-
10 տեց ։ Եւ ⁿՏէրոջը Հոգին անոր
վրայ ըլլալով՝ Իսրայէլի մէջ դա-
տաւորութիւն կ՚ընէր . ու երբոր
պատերազմի ելաւ . Տէրը Միջա-
գետքի Քուսարսաթեմ թագաւորը
անոր ձեռքը տուաւ . և անոր ձեռ-
քը Քուսարսաթեմին դէմ զօրա-
11 ցաւ ։ Ու երկիրը քառասուն տարի
հանգստացաւ . և Կենեզեան Գո-
թոնիէլը մեռաւ ։
12 ᵒՈւ Իսրայէլի որդիքը նորէն Տէ-
րոջը առջևը չարութիւն ըրին , և

Ն . Ք . ՂՔ . Իբր 1406
ᵃԳլ . Բ . 21 ։ 22 ։
ᵇՅես . ԺԳ . 3 ։
ᶜԳլ . Բ . 22 ։
ᵈՍաղ . ՃԶ . 35 ։
ᵉԵլ . ԼԴ . 16 ։ Բ Օր . Է . 3 ։
ᶠԳլ . Բ . 11 ։
ᵍԳլ . Բ . 13 ։
ʰԵլ . ԼԴ . 13 ։ Բ Օր . ԺԶ . 21 ։ Գլ . Զ . 25 ։
† Կամ՝ անտառները
ⁱԱմբ . Գ . 7 ։
ʲԳլ . Բ . 14 ։
Իբր 1402
ᵏՀմր 15 . Գլ . Դ . 3 . Զ . 7 . Ժ . 10 ։ Ա Թագ . ԺԲ . 10 . Նեեմ . Թ . 27 ։ Սաղ . ԻԲ . 5 ։ ՃԶ . 44 ։ ՃԷ . 13 ։ 19 ։
Իբր 1394
ˡԳլ . Բ . 16 ։
ᵐԳլ . Ա . 13 ։
ⁿՏես Թուոց ԻԷ . 18 ։ Գլ . Զ . 34 ։ ԺԱ . 29 ։ ԺԳ . 25 ։ ԺԴ . 6 . 19 ։ Ա Թագ . ԺԱ . 6 ։ Բ Մն . ԺԵ . 1 ։
ᵒԳլ . Բ . 19 ։
Իբր 1354

Ն․ Ք․ ԴՔ․ Իրր 1354

հ ա Թագ․ ժբ․ 9։
յ Գլ․ ե․ 14։
ղ Գլ․ ա․ 16։
ճ բ Օր․ իը․ 40։

Իրր 1336
մ Հմր 9։ Սաղ․ հը․ 34։
յ Գլ․ ի․ 16։
* Եբր․ աջ ձեռքը գոցուած մարդ
† Կամ՝ Թըզաչափ

Տէրոջը առջեւ չարութիւն ընելնուն համար՝ Տէրը հՄովաբի Էգղոն թագաւորը Իսրայէլին դէմ
13 ուժովցուց․ Եւ անիկայ՝ Ամմոնի ու յԱմաղէկի որդիքը իր քովը ժողվեց, և գնաց Իսրայէլը զարկաւ, ու ղԱրմաւենեաց քաղաքին տի-
14 րեց ։ Եւ Իսրայէլի որդիքը ճՄովաբի Էգղոն թագաւորին տասնութը տարի ծառայութիւն ըրին ։
15 Ու Իսրայէլի որդիքը մՏէրոջը աղաղակեցին․ և Տէրը անոնց մէկ փրկիչ մը հանեց, Բենիամինեան Գերայի որդին Աւովդը՝ որ յ*ահեկագործ էր․ ու Իսրայէլի որդիքը անոր ձեռքովը՝ Մովաբի Էգղոն
16 թագաւորին ընծայ խրկեցին ։ Եւ Աւովդ մէկ †կանգնաչափ երկայնութեամբ երկսայրի սուր մը շինեց իրեն, ու զանիկայ լաթերուն տակէն՝ իր աջ ազդրին վրայ կապեց ։
17 Եւ ընծան Մովաբի Էգղոն թագաւորին տարաւ․ (ու Էգղոն խիստ
18 գէր մարդ մըն էր․) Ու երբոր ընծան տուաւ լմնցուց, ընծան կրող
19 մարդիկները ետ խրկեց ։ Եւ ինքը նԳաղգաղայի մօտ եղած ‡քարահանքէն ետ դարձաւ, ու ըսաւ․ Ո՛վ թագաւոր՝ քեզի մէկ ծածուկ խօսք մը ունիմ․ և անիկայ ըսաւ․ Լռո՛ւ ‖կեցիր․ ու բոլոր անոր քովը
20 կայնողները դուրս ելան ։ Եւ Աւովդ անոր քովը մօտեցաւ․ ու անիկայ նստեր էր իրեն յատկացեալ ւամառնային վերնատանը մէջ․ և Աւովդ անոր ըսաւ․ Քեզի Աստուծոյ կողմանէ մէկ խօսք մը ունիմ․ ու անիկայ աթոռին վրայէն ելաւ ։
21 Եւ Աւովդ իր ձախ ձեռքը երկնցնելով՝ սուրը իր աջ ազդրին վրայէն քաշեց, ու անոր փորը խո-
22 թեց, Այնպէս որ՝ երկաթին ետեւէն կոթն ալ ներս մտաւ․ ու գիրուցը երկաթը բռնեց, անանկ որ՝ սուրը անոր փորէն չկրցաւ հանել․
23 ու աղբը դուրս ելաւ ։ Եւ Աւովդ սրահը ելաւ, ու վերնատանը դռները անոր վրայէն գոցեց՝ ու կղպեց․
24 Եւ ինքը ելաւ գնաց ։ Ու անոր ծառաները գացին նայեցան՝ որ ահա վերնատանը դռները կղպուած էին․ ու ըսին․ Անիկայ անտարակոյս իր ամառնային սենեակին մէջը ս§հարկաւորութեան գացած է ։
25 Եւ անոնք սպասեցին, մինչեւ որ ամչցան․ բայց ահա վերնատանը դռները չէր բանար․ ու բանալին առին բացին․ և ահա իրենց տէրը
26 գետնի վրայ ինկած մեռած էր ։ Ու քանի որ անոնք կը տնտընային․ Աւովդ փախաւ, և քարահանքէն անցնելով՝ ողջ առողջ Սեիրա հասաւ ։

ն Ցես․ գ․ 20։
‡ Կամ՝ փորուած ժայռերէն
‖ Կամ՝ կեցիք․
ւ Տես Ամով․ գ․ 15։
ս ա Թագ․ իդ․ 4։
§ Եբր․ ոտքերը ծածկած է։

27 Ու երբոր հասաւ, ՚Եփրեմի լեռանը վրայ ղփող փչեցուց․ և Իսրայէլի որդիքը անոր հետ ան լեռնէն վար իջան, ու ինքը անոնց
28 առջեւէն կ'երթար ։ Եւ անոնց ըսաւ․ Իմ ետեւէս եկէք․ քանզի ՚Տէրը ձեր թշնամիները՝ Մովաբացիքը ձեր ձեռքը տուաւ․ ուստի անոր ետեւէն իջան, և ‡Մովաբին առջեւէն ՚՚Յորդանանու անցքերը բռնեցին, ու թող չտուին որ մարդ մը անց-
29 նի ։ Եւ ան ժամանակը Մովաբէն՝ տասը հազարի չափ մարդ կոտրեցին, որոնց ամէնն ալ յաղթանդամ ու զօրաւոր մարդիկներ էին․
30 և մէկը չկրցաւ փախչիլ ։ Ու ան օրը Մովաբ՝ Իսրայէլին ձեռքին տակը նուաճեցաւ․ ու ՚՚երկիրը ութսուն տարի հանգստացաւ ։
31 ՚Եւ անկէ ետեւ՝ Անաթին տղան Սամեգարը ելաւ, ու ՚՚եզներու խըթանով մը Փղշտացիներէն վեց հարիւր մարդ կոտրեց․ ՚և ասիկայ ալ ՚Իսրայէլը ազատեց ։

Ն․ Ք․ ԴՔ․ Իրր 1336

՚ Ցես․ ժէ․ 15։ Գլ․ է․ 24։ ժէ․ 1։ ժթ․ 1։
՚ Գլ․ ե․ 14։ գ․ 34։ ա Թագ․ ժգ․ 3։
՚ Գլ․ է․ 9, 15։ ա Թագ․ ժէ․ 47։
‡ Կամ՝ Մովաբի երկիրը երթալու
՚ Ցես․ բ․ 7։ Գլ․ ժբ․ 5։
՚ Հմր 11։
՚ Գլ․ ե․ 6, 8։ ա Թագ․ ժգ․ 19, 22։
՚ ա Թագ․ ժէ․ 47, 50։
՚ Գլ․ բ․ 16։
՚ Գլ․ դ․ 1, 3։ Ի․ ժ․ 7, 17։ ժա․ 4, Ի։ ա Թագ․ դ․ 1։

## ԳԼ․ Դ

1 Դեբորան ու Բարակը՝ Յաբինին ու Սիսարային ձեռքէն Իսրայէլը կ'ազատեն ։ 18 Յայէլ կը մեռցնէ Սիսարա զօրագլուխը ։

1 Իսկ Աւովդին մեռնելէն ետքը ՚Իսրայէլի որդիքը Տէրոջը առ-
2 ջեւը նորէն չարութիւն ըրին, Ու Տէրը ՚մատնեց զանոնք Քանանացւոց Յաբին թագաւորին ձեռքը, որ ՚Հասորի մէջ կը թագաւորէր․ և անոր զօրագլուխը ՚Սիսարան էր, ու ՚Հազգաց Արիսոթին մէջը կը
3 բնակէր ։ Եւ Իսրայէլի որդիքը Տէրոջը աղաղակեցին․ քանզի անիկայ ինը հարիւր ՚երկաթէ կառքեր ունէր․ ու անիկայ քսան տարի ՚Իսրայէլի որդիքը սաստիկ նեղեց ։
4 Եւ ան ատենը Դեբորա մարգարէուհին՝ Ղաբիդոթի կնիկը՝ Իսրայէլի մէջ դատաւորութիւն կ'ընե-
5 նէր ։ ՚Ու անիկայ Եփրեմի լեռանը վրայ՝ Ռամայի ու Բեթելի մէջտեղը՝ Դեբորայի արմաւենիին տակը կը բնակէր․ և Իսրայէլի որդիքը դատաստանի համար անոր
6 կ'ելլէին ։ Ու Դեբորա մարդ խրկեց, և ՚Նեփթաղիմի Կադէսէն ՚Աբինոամի որդին Բարակը կանչեց, ու անոր ըսաւ․ Իսրայէլին Տէր Աստուածը քեզի չհրամայե՞ց՝ ըսելով․ Գնա՝ Թաբոր լեռը ելիր, ու Նեփթաղիմի որդւոցմէ և Զաբուղոնի որդւոցմէ քու հետդ տասը հա-
7 զար մարդ առ, Ու ես՝ Յաբինին զօրագլուխը Սիսարան, և անոր կառքերը ու զօրաց բազմութիւնը ՚քու դիմացդ պիտի հանեմ ՚Կիսոն հեղեղատին քովը, ու զանիկայ քու

Իրր 1316
՚ Գլ․ բ․ 19։
՚ Գլ․ բ․ 14։
՚ Ցես․ ժա․ 1, 10։ ժթ․ 36։
՚ ա Թագ․ ժբ․ 9։ Սաղ․ ձգ․ 9։
՚ Հմր 13, 16։
՚ Գլ․ ա․ 19։
՚ Գլ․ ե․ 8։ Սաղ․ ճզ․ 42։
՚ Ծն․ լե․ 8։

Իրր 1296
՚ Ցես․ ժթ․ 37։
՚ Եբր․ ժա․ 32։

՚ Ել․ ժգ․ 4։
՚ Գլ․ ե․ 21։ գ Թագ․ ժը․ 40։ Սաղ․ ձգ․ 9, 10։

8 ձեռքդ պիտի մատնեմ ։ Եւ Բա-
րակ անոր ըսաւ . Թէ որ դուն ալ
իմ հետս երթաս , կ'երթամ . բայց
թէ որ իմ հետս չերթաս , չեմ եր-
9 թար ։ Եւ անիկայ ըսաւ . Ան-
շուշտ ես քու հետդ պիտի երթամ .
բայց քու երթալու ճամբուդ մէջ
դուն փառք մը չես ստանար . քան-
զի Տէրը Սիսարան մէկ կնկան մը
ձեռքը պիտի մատնէ ։ Ու Դեբորա
ելաւ Բարակին հետը Կադէս գնաց ։
10 Եւ Բարակ՝ Զաբուղոնը ու Նեփ-
թաղիմը Կադէսի մէջ ժողվեց , և
տասը հազար մարդով ելաւ . Դե-
բորան ալ անոր հետը ելաւ ։
11 ( Ու Մովսէսին աներոջը Յոբա-
բին որդիներէն՝ Կենեցի Քաբէրը՝
Կենեցիներէն զատուեր էր , ու իր
վրանը Կադէսի մօտ՝ Սանանիմի
կաղնիին քովը կանգներ էր ։ )
12 Ան ատենը Սիսարային իմացու-
ցին , որ Աբինոամի որդին Բարակը
13 Թաբոր լեռը ելեր է ։ Եւ Սիսարա
իր բոլոր կառքերը՝ ինը հարիւր եր-
կաթէ կառքերը , ու իր հետը ե-
ղող բոլոր զօրքը՝ ազգաց Արիսո-
թէն Կիսոն հեղեղատը ժողվեց ։
14 Եւ Դեբորա ըսաւ Բարակին .
Ո՛տք ելիր քանզի Տէրը այսօր Սի-
սարան քու ձեռքդ մատնեց . միթէ
Տէրը քու առջեւէդ չելաւ ։ Ու
Բարակ Թաբոր լեռնէն իջաւ , և իր
հետը տասը հազար մարդ կար ։
15 Ու Տէրը՝ Սիսարան , և բոլոր կառ-
քերը , ու բոլոր բանակը՝ Բարակին
առջեւը սուրի բերնով խորտակեց .
և Սիսարա կառքէն վար իջաւ , ու
16 ոտքով փախաւ . Եւ Բարակ՝ կառ-
քերը ու բանակը մինչեւ ազգաց Ա-
րիսոթը հալածեց . ու Սիսարային
բոլոր բանակը սուրի բերնով ին-
կաւ . ու մարդ մը չմնաց ։
17 Եւ Սիսարա ոտքով Կենեցի Քա-
բէրին կնկանը Յայէլին վրանը փա-
խաւ քանզի Հասորի Յաբին թա-
գաւորին՝ ու Կենեցի Քաբէրին տա-
նը մէջտեղը խաղաղութիւն կար ։
18 Ուստի Յայէլ Սիսարան դիմաւո-
րելու ելաւ , ու անոր ըսաւ . Տէր
իմ դարձիր . ինծի դարձիր . մի
վախնար ։ Ուստի անիկայ դէպ 'ի
վրանը անոր դարձաւ , և ինքը զա-
նիկայ մէկ լաթով մը ծածկեց ։
19 Ու անիկայ կնկանը ըսաւ . Շնորհք
ըրէ ինծի քիչ մը ջուր տուր որ
խմեմ , քանզի ծարաւած եմ ։ Ան
ալ կաթին տիկը բացաւ , ու անոր
խմցուց . ետքը զանիկայ ծածկեց ։
20 Եւ անիկայ կնկանը ըսաւ . Վրանին
դուռը կեցիր , ու թէ որ մարդ մը
գայ ու քեզի հարցընէ՝ ու ըսէ թէ՝
Աս տեղս մարդ կա՞յ Չկայ ըսես ։
21 Ու Քաբէրին կնիկը Յայէլ վրա-
նին մէկ ցիցը առաւ , և ուռն ալ
ձեռքը բռնելով՝ կամացուկ մը ա-
նոր քովը գնաց , ու ցիցը անոր ծա-
մելիքը մխելով՝ մինչեւ գետինը գա-
մեց , և անիկայ յոգնած ըլլալուն
համար խորունկ քնոյ մէջ էր . այս-
22 պէս մեռաւ ։ Եւ ահա Բարակը՝
Սիսարային ետեւէն կը վազէր . և
Յայէլ զանիկայ դիմաւորելու ելաւ ,
ու անոր ըսաւ . Եկուր , քու փըն-
տըռած մարդդ քեզի ցուցընեմ .
ու անիկայ կնկանը հետ ներս մը-
տաւ . և ահա Սիսարան մեռած
պառկեր էր , ու ցիցը անոր ծամե-
լիքին մէջն էր ։
23 Եւ Աստուած ան օրը՝ Քանա-
նացւոց Յաբին թագաւորը Իսրա-
յէլի որդւոց առջեւը կորագլուխ ը-
24 րաւ ։ Ու Քանանացւոց Յաբին
թագաւորին դէմ Իսրայէլի որդւոց
ձեռքը օրէ օր կը զօրանար , մինչեւ
որ Քանանացւոց Յաբին թագաւո-
րը բնաջինջ ըրին ։

ՆՔԶԲ . ԻՐ 1296
Բ Գլ . Բ . 14 ։
Գ Գլ . Ե . 18 ։
Դ Տես Եւ . Ժա . 8 ։ Դ Թագ . Ի . 10 ։
Հ Թուոց . Ժ . 29 ։
Ս Գլ . Ա . 16 ։
Է Հմր 6 ։
Ձ Բ Օր . Թ . 3 ։ Բ Թագ . Ե 24 ։ Սաղ . ԿԸ 7 ։ Եսայ . ԾԲ 12 ։
Ր Սաղ . ՁԳ . 9 . 10 ։ Տես Յեսու . Ժ 10 ։
Յ Գլ . Ե . 25 ։
Ն Գլ . Ե 26 ։
Ն Սաղ . ԺԸ . 47 ։

## ԳԼ . Ե

1—31 Դեբորային ու Բարակին երգը ։

1 Եւ ան օրը Դեբորան ու Աբի-
նոամի որդին Բարակը՝ երգեցին
ու ըսին .
2 Իսրայէլի զօրավարացը առաջ-
նորդելուն , ժողովուրդին յօ-
ժարակամ անձնանուէր ըլլալուն
համար՝ Տէրը օրհնեցէք ։
3 Ո՛վ թագաւորներ՝ մտիկ ըրէք ,
ո՛վ նախարարներ՝ ականջ դրէք .
ես Տէրոջը պիտի երգեմ , Իսրայէլի
Տէր Աստուծոյն սաղմոս պիտի ը-
սեմ ։
4 Ո՛վ Տէր՝ Երբոր դուն Սէիրէն
ելար , ու Եդովմի դաշտէն չուեցիր ,
Երկիրը շարժեցաւ , երկինքը անձրե-
ւեղաց , ամպերն ալ ջուր կաթե-
ցուցին ։
5 Տէրոջը երեսէն լեռները հալե-
ցան . Իսրայէլի Տէր Աստուծոյն
երեսէն Սինան ալ հալեցաւ ։
6 Անաթի որդւոյն Սամեգարին օ-
րերը՝ Յայէլին օրերը՝ մեծ ճամ-
բաները *անկոխ էին" . ու ճանա-
պարհորդները խոտորնակ ճամբա-
ներէ կ'երթային ։
7 Իսրայէլի մէջ զօրավարներ չմնա-
ցին . չմնացին , մինչեւ որ ես Դեբո-
րա ելայ . մինչեւ որ ելայ Իսրայէլի
մէջ մայր ըլլալու ։
8 Նոր աստուածներ ընտրեցին .
ան ատենը իրենց դռներուն մէջ
պատերազմ եղաւ . Արդեօք Իս-
րայէլի քառասուն հազար զօրքին
մէջը՝ վահան կամ նիզակ երեւցա՞ւ ։
9 Իմ սիրտս՝ Իսրայէլի իշխաննե-
րուն վրայ է Ով ժողովուրդին

ՆՔԶԲ . ԻՐ 1296
Տես Եւ . ԺԵ . 1 ։ Սաղ . ԺԸ . ին վերնագիրը ։
Բ Բ Մն . ԺԷ . 16 ։
Գ Բ Օր . ԼԲ . 1 . 3 ։ Սաղ . Բ . 10 ։
Դ Բ Օր . ԼԳ . 2 ։ Սաղ ԿԸ . 7 ։
Ե Բ Թագ . ԻԲ . 8 ։ Սաղ . ՂԸ . 8 ։ Եսայ . ԿԴ . 3 ։ Ամբ . Գ . 3 ։ 10 ։
Զ Բ Օր . Դ . 11 ։ Սաղ . ՂԷ 5 ։
Է Ել . ԺԹ . 18 ։
Ը Գլ . Գ 31 ։
Թ Գլ . Դ 17
Ժ Ղւ . ԻԳ . 22 ։ Բ Մն . ԺԵ . 5 . Եսայ ԼԳ 5 ։ Ողբ . Ա . Դ . Դ . 15 ։
* Եբր . պակսեցան .
Ի Եւ . ԽԹ . 23 ։
Լ Բ Օր . ԼԲ . 16 ։ Գլ . Բ . 12 . 17 ։
Խ Ա Թագ . ԺԳ 19 22 ։ Գլ . Գ . 8 ։
Ծ Հմր 2 ։

Ն. Ք. գՔ. Իրր 1296

անձնանուէր եղողները , Տէրը օրհ-
նեցէ՛ք ։
10 ˡՃերմակ էշերու վրայ հեծնող-
ներ , ᵐդատաստանի ատեանը նըս-
տողներ , ու ճամբու վրայ պտը-
տողներ՝ ⁿզրուցեցէ՛ք ,
11 ᵒԱղեղնաւորներուն ձայնէն ջուր
հանելու տեղերուն մէջ . հոն ᵖՏէ-
րոջը արդարութիւնները , ու Իս-
րայէլի մէջ անոր զօրավարացը ար-
դարութիւնները պատմեն . ան ա-
տենը Տէրոջը ժողովուրդը դռները
իջան ։
12 ᵠԱրթնցի՛ր , արթնցի՛ր ով Դե-
բօրա . արթնցի՛ր , արթնցի՛ր , եր-
գը ըսէ . ով Բարակ՝ ելի՛ր . ով
Աբինոամի որդի՝ ʳքու գերութիւնդ
գերի՛ ըրէ ։
13 Ան ատենը փախստականները՝
ˢժողովուրդին զօրաւորներուն վը-
րայ յարձակեցան . Տէրը ինծի հետ
զօրաւորներուն դէմ իջաւ ։
14 ᵗԵփրեմի արմատէն եղողները՝
ᵘԱմաղեկին վրայ ելան . Բենիամի-
նը քու ետեւէդ քու ժողովուրդիդ
մէջ էր . ᵛՄաքիրէն իշխաններ ,
ու Զաբուղոնէն՝ դպրի գրիչ բըռ-
նողներ իջան ։
15 Եւ Իսաքարի զօրավարները Դե-
բօրային հետ , ու Իսաքարն ալ
ʷԲարակին պէս՝ իր ոտքերովը հո-
վիտը խրկուեցաւ . Ռուբէնի †տոհ-
մերուն մէջը մեծ յուզմունք կար .
16 Ինչո՞ւ համար ˣփարախներուն
մէջը նստար , որ ‡հօտերուն մայե-
լը՝ լսես ։ Ռուբէնի տոհմերուն
մէջը մեծ տարակուսանք կար ։
17 ʸԳաղաադը Յորդանանու անդին
կողմը կը բնակէր , ու Դանը ինչո՞ւ
համար նաւերու մէջ պանդուխտ
մնաց ։ ᶻԱսերը ծովուն եզերքը կը
նստէր , ու իր նաւահանգիստնե-
րուն քովը կը բնակէր ։
18 ᵃԶաբուղոնը ու Նեփթաղիմը
անձնուէր ժողովուրդ մըն է , որ դաշ-
տին բարձր տեղուանքը՝ զինքը մա-
հուան վտանգի մէջ կը դնէ ։
19 Թագաւորները եկան , պատե-
րազմ ըրին . ան ատենը Քանա-
նացւոց թագաւորները Մակեդդո-
վի ջուրին քովը՝ Թանաքի մէջ պա-
տերազմ ըրին . ᵇաւար չառին ։
20 ᶜԵրկինքէն պատերազմ ըրին .
ᵈաստղերը իրենց շրջաններէն՝ Սի-
սարային դէմ պատերազմ ըրին ։
21 ᵉԿիսոն հեղեղատը՝ ան հին հե-
ղեղատը՝ Կիսոն հեղեղատը զանոնք
քշեց տարաւ ։ Ո՛վ իմ անձս՝ ա-
նոնց զօրութիւնը կոխեցիր ։
22 Ան ատենը ձիերուն սմբակները՝
սաստիկ վազելնուն համար կոտր
կոտր եղան , զօրաւորներուն վազ-
ցընելովը ։
23 Տէրոջը հրեշտակը ըսաւ . Մա-
րովզը նզովեցէ՛ք . անոր բնակիչ-
ները սաստիկ նզովեցէք . քանզի
ᶠՏէրոջը օգնութեանը՝ զօրաւոր
մարդոց դէմ՝ Տէրոջը օգնու-
թեանը չեկան ։
24 ᵍԿենեցի Քաբերին կինը Յայէլ՝
կիներուն մէջը ամենէն աւելի օրհ-
նեա՛լ ըլլայ . ʰվրաններու մէջ բնա-
կող կիներէն աւելի օրհնեալ ըլ-
լայ ։
25 ⁱՍիսարան ջուր ուզեց . կաթ
տուաւ . իշխանաց ամանովը կոգի
մատուց ։
26 ʲԱնիկայ իր ձեռքը ցիցին , ու իր
աջ ձեռքը՝ հիւսան ուռին երկըն-
ցուց , և Սիսարային զարնելով՝
գլուխը ճեղքեց . ու ցիցը անոր ծա-
մելիքը մխելով՝ խոցեց ։
27 Անիկայ ծռեցաւ , Յայէլին ոտ-
քերուն մէջը ինկաւ փռուեցաւ .
ոտքերուն մէջը ծռեցաւ ինկաւ .
ուր որ ծռեցաւ , հոն մեռած ին-
կաւ ։
28 Սիսարային մայրը պատուհանէն
նայեցաւ , ու վանդակին ետեւէն
կանչվռտեց . ինչո՞ւ համար անոր
կառքը կ՚ուշանայ գալու . ինչո՞ւ
անոր կառքերուն քայլերը ետ կը
մնան ։
29 Անոր իմաստուն տիկինները ա-
նոր պատասխան տուին . ինքն ալ
իր խօսքերուն պատասխանը իրեն
կու տար .
30 ᵏԱնշուշտ անոնք աւար գտան .
զանիկայ բաժնելու վրայ են . ամէն
կտրիճի համար՝ մէկ կամ երկու
աղջիկ , իսկ Սիսարային համար՝
գոյնզգոյն աւար մը , գոյնզգոյն նը-
կարագործ աւար մը , երկու կողմը
բանուած ու գոյնզգոյն վզնոցներ
աւար առնող պիտի ըլլան ։
31 ˡՈ՛վ Տէր՝ քու բոլոր թշնամի-
ներդ այսպէս կորսուին . իսկ զԱ-
նիկայ սիրողները , ᵐիր զօրու-
թեամբը ելլող արեւուն պէս ըլ-
լան ։
Ու երկիրը քառասուն տարի հան-
գստացաւ ։

## ԳԼ. Զ

1 Իսրայէլացիք Տէրոջը դէմ մեղանչելով՝ Մա-
դիանացիներէն կը նեղուին ։ 8 Մարգարէ մը
զանոնք կը յանդիմանէ ։ 11 Հրեշտակ մը
Գեդէոնը կը խրկուի Իսրայէլը ազատելու հա-
մար ։ 17 Գեդէոնին զոհը կրակով կը սպա-
ռի ։ 25 Գեդէոն Բահաղին սեղանը կը փլցը-
նէ , ու իր շինած սեղանին վրայ ողջակէզ կը
մատուցանէ ։ 28 Յովաս իր որդին կը պաշտ-
պանէ . և զանիկայ Յերոբաաղ կ՚անուանէ ։
33 Գեդէոնին զօրքը ։ 36 Գեդէոնին տրուած
նշանները ։

1 ᵃՈւ Իսրայէլի որդիքը Տէրոջը
առջեւ չարութիւն ըրին . ու
Տէրը զանոնք եօթը տարի ᵇՄա-

Իրր 1256

Margin references (left): ˡ Գլ. Ժ. 4 ։ ԺԲ. 14 ։ ᵐ Սաղ. ՃԷ. 32 ։ ⁿ Սաղ. ՃԺ. 2 ։ ՃԽԵ. 5 ։ ᵒ Կամ՝ աւար բաժնողներուն , կամ՝ ժողովուրդներուն ։ ᵖ Ա Թագ. ԺԲ. 7 ։ Սաղ. ՃԽԵ. 7 ։ ᵠ Սաղ. ԽԷ. 8 ։ ʳ Սաղ. ԿԸ. 18 ։ ˢ Սաղ. ԽԹ. 14 ։ ᵗ Գլ. Գ. 27 ։ ᵘ Գլ. Գ. 13 ։ ᵛ Թուոց. ԼԲ. 39 , 40 ։ ʷ Գլ. Դ. 14 ։ † Կամ՝ հեղեղատներուն ։ ˣ Թուոց. ԼԲ. 1 ։ ‡ Կամ՝ հօտերուն մէջ սրինգի ձայնը ։ ʸ Յես. Յես. ԺԳ. 25 . 31 ։ ᶻ Յես. ԺԹ. 29 . 31 ։ ᵃ Գլ. Դ. 10 ։ ᵇ Գլ. Դ. 16 ։ Սաղ. ԽԴ. 12 ։ Տես Հմր 30 ։ ᶜ Տես Յես. Ժ. 11 ։ Սաղ. ՀԷ. 17 , 18 ։ ᵈ Գլ. Դ. 15 ։ ᵉ Գլ. Դ. 7 ։

Margin references (right): ᶠ Ա Թագ. ԺԷ. 47 ։ ԺԸ. 17 ։ ԻԵ. 28 ։ ᵍ Գլ. ԻԱ. 9 . 10 ։ Նեեմ. Գ. 5 ։ ʰ Գլ. Գ. 17 ։ ⁱ Ղուկ. Ա. 28 ։ ʲ Գլ. Դ. 19 ։ ᵏ Գլ. Դ. 21 ։ ˡ Ել. ԺԵ. 9 ։ ᵐ Սաղ. ՁԳ. 9 . 10 ։ Սաղ. ԺԹ. 5 ։ Բ Թագ. ԻԳ. 4 ։ ᵃ Գլ. Բ. 19 ։ ᵇ Ամբ. Գ. 7 ։

Ն. Բ. ԴՔ.
Իրր 1256

[բ] Ա Թագ. ժգ. 6 ; Եբր. ժա. 38 ;
[գ] Գւ. գ. 13 ; [դ] Ծն. իթ. 1 ; Գւ. է. 12 ; ը. 10 ; Գ Թագ. դ. 30 ; Յոբ. ա. 3 ;
[ե] Ղւ. իզ. 16 ; Բ Օր. իը. 30, 33, 51 ; Միք. զ. 15 ;
[զ] Գւ. է. 12 ;
[է] Գւ. գ. 15 ; Ովս. ե. 15 ;
Իրր 1249
[ը] Սաղ. խդ. 2, 3 ;
[թ] Դ Թագ. ժէ. 35, 37, 38 ; Երեմ. ժ. 2 ;
[ժ] Յես. ժէ. 2 ;
[ի] Եբր. ժա. 32 ;
[լ] Գւ. ժգ. 3 ; Ղուկ. ա. 11, 28 ;
[խ] Յես. ա. 5 ;
[ծ] Սաղ. ձթ. 49 ; Ես. ծթ. 1 ; կգ. 15 ;
[կ] Սաղ. խդ. 1 ;
[հ] Բ Մն. ժե. 2 ;
[ղ] Ա Թագ. ժբ. 11 ; Եբր. ժա. 32, 34 ;

2 դիանացւոց ձեռքը մատնեց ։ Եւ
Մադիանացւոց ձեռքը Իսրայէլի
վրայ ուժովցաւ . [ա] Իսրայէլի որ-
դիքը Մադիանացւոց պատճառաւը՝
իրենց համար [բ]լեռներու մէջ խո-
ռոչներ , քարայրներ և պատնէշներ
3 շինեցին ։ Ու երբոր Իսրայէլացիք
սերմ կը ցանէին , Մադիանացիք
անոնց վրայ կ'ելլէին . և [գ]Ամաղե-
կացիք [դ]ու արեւելքի բնակիչներն
4 ալ կ'ելլէին . Եւ անոնց դէմ բա-
նակ կազմելով՝ [ե]գետնին բերքը
կ'աւրէին մինչև Գազա , ու Իսրա-
յէլին ապրուստ մը չէին թողուր ,
ոչ ոչխար՝ ոչ արջառ և ոչ էշ .
5 Քանզի անոնք իրենց հօտերովը ու
վրաններովը կ'ելլէին , և [զ]մարախի
պէս բազմութեամբ կու գային .
թէ՛ անոնք և թէ՛ անոնց ուղտերը
չէին համրուեր . ու Իսրայէլի երկի-
րը կու գային զանիկայ աւրելու
6 համար ։ Եւ Իսրայէլը Մադիանա-
ցւոց պատճառաւը շատ աղքատա-
ցաւ . ու Իսրայէլի որդիքը [է]Տէրո-
ջը աղաղակեցին ։
7 Ու երբոր Իսրայէլի որդիքը Տէ-
րոջը աղաղակեցին Մադիանացւոց
8 պատճառաւը , Տէրը Իսրայէլի որ-
դւոցը մէկ մարգարէ մը խրկեց . [ը]ու
անիկայ ըսաւ անոնց . Իսրայէլին
Տէր Աստուածը այսպէս կ'ըսէ . Ես
ձեզ Եգիպտոսէն հանեցի , ու ձեզ
ծառայութեան տունէն դուրս բե-
9 րի , Եւ ձեզ Եգիպտացւոց ձեռ-
քէն , ու բոլոր ձեզի նեղութիւն
տուողներուն ձեռքէն ազատեցի ,
և [թ]զանոնք ձեր առջեւէն վռընտե-
10 լով՝ անոնց երկիրը ձեզի տուի . Ու
ձեզի ըսի . Ես եմ ձեր Եհովայ Աս-
տուածը . [ժ]մի՛ վախնաք Ամորհա-
ցւոց աստուածներէն , որոնց երկ-
րին մէջ կը բնակիք . բայց դուք
իմ խօսքս մտիկ չըրիք ։
11 Եւ Տէրոջը հրեշտակը եկաւ , ու
[ի]Աբիեզերեան Յովասին բեւեկնիին
տակը նստաւ , որ Եփրային մէջն
էր . ու անոր որդին [լ]Գեդէոնը
հնձանին մէջ ցորեն կը ծեծէր՝ Մա-
դիանացւոց երեսէն փախցընելու
12 համար ։ Եւ [խ]Տէրոջը հրեշտակը
անոր երեւցաւ , ու ըսաւ . Ո՛վ զօ-
րաւոր կտրիճ , Տէրը [ծ]քու հետդ է ։
13 Եւ Գեդէոն անոր ըսաւ . Ո՛հ՝ Տէր
իմ , թէ որ Տէրը մեր հետն է , ին-
չո՞ւ համար աս բոլոր բաները մեր
գլուխը եկաւ . և [կ]ո՞ւր են անոր ա-
մէն հրաշքները , [հ]որոնք մեր հայ-
րերը մեզի կը պատմեն՝ ըսելով թէ՝
Տէրը մեզ Եգիպտոսէն հանեց .
բայց հիմա Տէրը [ձ]մեզ երեսէ ձգեց ,
ու մեզ Մադիանացւոց ձեռքը
14 մատնեց ։ Եւ Տէրը անոր նայեցաւ ,
ու ըսաւ . [ղ]Ատ քու զօրութիւնովդ
գնա՛ , որ Իսրայէլը Մադիանացւոց
ձեռքէն ազատես . [ճ]չէ՞ որ ես քեզ
15 խրկեցի ։ Ու անիկայ անոր ըսաւ .
Ո՛հ՝ Տէր իմ , Իսրայէլը ինչո՞վ ա-
զատեմ . ահա [մ]իմ *ազգատոհմս՝
Մանասէի ցեղին մէջ աղքատն է ,
ու ես իմ հօրս տանը մէջ պզտիկն
16 եմ ։ Եւ Տէրը անոր ըսաւ . [յ]Ես
անշուշտ քու հետդ պիտի ըլլամ ,
ու Մադիամը՝ մէկ մարդու մը պէս
17 պիտի զարնես ։ Եւ անիկայ անոր
ըսաւ . Կ'աղաչեմ , թէ որ ես քու
աչքիդ առջեւը շնորհք գտայ , [ն]ինծի
նշան մը ցուցուր , որ [illegible]
18 ինծի հետ խօսողը դուն ես ։ [շ]Կ'ա-
ղաչեմ որ ասկէ չերթաս , մինչև որ
ես քեզի գամ , իմ ընծաս բերեմ ,
ու քու առջեւդ դնեմ ։ Եւ անիկայ
ըսաւ . ես կը սպասեմ , մինչև որ
19 դուն դառնաս ։ [ո]Ու Գեդէոն ներս
մտաւ , այծերէն ուլ մը և մէկ ար-
դու ալիւրէ բաղարջ շօթեր պատ-
րաստեց . միսը սակառի մը մէջ
դրաւ , ու արգանակն ալ պտուկի
մը մէջ դրաւ , և անոր առջեւը հա-
նեց բեւեկնիին տակը՝ ու [չ]անոր մա-
20 տուց ։ Եւ Աստուծոյ հրեշտակը
անոր ըսաւ . Միսը ու բաղարջ շօ-
թերը ա՛ռ , [պ]աս վէմին վրայ դիր ,
21 ու [ջ]արգանակը թափէ ։ Եւ անի-
կայ անանկ ըրաւ ։ Ետքը Տէրոջը
հրեշտակը իր ձեռքի գաւազանին
ծայրը երկնցուց , ու միսին և բա-
ղարջ շօթերուն դպաւ . ու [ռ]վէմէն
կրակ ելլելով՝ միսը և բաղարջ շօ-
թերը այրեց . ու Տէրոջը հրեշտա-
կը անոր աչքերուն առջեւէն գնաց ։
22 Եւ Գեդէոն [ս]տեսաւ որ անիկայ
Տէրոջը հրեշտակն է . ու Գեդէոն
ըսաւ . Ո՛հ՝ Տէր Եհովայ , [վ]որ Տէ-
րոջը հրեշտակը երես առ երես տե-
23 սայ ։ Բայց Տէրը անոր ըսաւ . [տ]Խա-
ղաղութիւն ըլլայ քեզի . մի՛ վախ-
նար , պիտի չմեռնիս ։
24 Եւ Գեդէոն հոն Տէրոջը սեղան
մը շինեց , ու անոր անունը [ր]†Ե-
հովաշալոմ կոչեց , որ մինչև աս օրս
[ց]Աբիեզերեանց Եփրային մէջը կե-
ցած է ։
25 Եւ ան գիշերը Տէրը անոր ըսաւ .
Քու հօրդ զուարակը՝ ու եօթը տա-
րեկան երկրորդ զուարակը ա՛ռ , և
քու հօրդ ունեցած Բահաղի սեղա-
նը փլցո՛ւր , ու [ւ]քովի անտառն ալ
26 կտրէ . Եւ ‡աս ապառաժ քարին
գլուխը՝ օրինաւոր կերպով՝ քու
Տէր Աստուծոյդ սեղան մը շինէ ,
ու երկրորդ զուարակը ա՛ռ , և քու
կտրած անտառիդ փայտերովը ող-
27 ջակէզ ըրէ ։ Ու Գեդէոն իր ծա-
ռաներէն տասը մարդ առաւ , և
Տէրոջը իրեն ըսածին պէս ըրաւ ,
ու իր հօրը տունէն , և քաղաքին

Ն. Բ. ԴՔ.
Իրր 1249

[ճ] Յես. ա. 9 ; Գւ. դ. 6 ;
[մ] Տես Ա Թագ. թ. 21 ;
* Եբր. Հազարաւորս . տես Միք. ե. 2 ;
[յ] Ել. գ. 12 ; Յես. ա. 5 ;
[ն] Ել. դ. 1-8 ; Հմր 36, 37 ; Դ Թագ. ի. 8 ; Սաղ. ձգ. 17 ; Ես. է. 11 ;
[շ] Ծն. ժը. 3, 5 ; Գւ. ժգ. 15 ;
[ո] Ծն. ժը. 6, 7, 8 ;
[չ] Գւ. ժգ. 19 ;
[պ] Տես Գ Թագ. ժը. 33, 34 ;
[ջ] Ղւ. թ. 24 ; Գ Թագ. ժը. 38 ; Բ Մն. է. 1 ;
[ռ] Գւ. ժգ. 21 ;
[ս] Ծն. ժզ. 13 ; լբ. 30 ; Ել. լգ. 20 ; Գւ. ժգ. 22 ;
[վ] Դան. ժ. 19 ;
[տ] Տես Ծն. իբ. 14 ; Ել. ժէ. 15 ; Երեմ. լգ. 16 ; Եզեկ. խը. 35 ;
† Եբր. Տէր խաղաղութեան , կամ՝ խաղաղութիւն Տեառն ;
[ր] Գւ. ը. 32 ;
[ց] Ել. լդ. 13 ; Բ Օր. է. 5 ;
‡ Կամ՝ աս ամրոցին գլխուն բաց տեղը

Ն․ Ք․ Գ․Ե․
իրր 1249

մարդիկներէն վախնալով ու բանը
ցորեկը ընելու՝ գիշերը ըրաւ ։
28 Ու երբոր քաղաքին մարդիկները
առաւօտուն կանուխ ելան, տեսան
որ Բահաղին սեղանը փլած, և ա-
նոր քովի անտառը կտրած, ու երկ-
րորդ զուարակը՝ շինուած սեղանին
29 վրայ՝ ողջակէզ եղած էր ։ Ուստի
իրարու ըսին․ Աս բանը ո՞վ ըրաւ․
և աղէկ մը փնտռեցին ու քննեցին․
ու ըսուեցաւ թէ՝ Աս բանը Յովա-
30 սին որդին Գեդէոնը ըրաւ ։ Եւ
քաղաքին մարդիկները Յովասին ը-
սին․ Որդիդ դո՛ւրս հանէ՝ որ մեռ-
նի, քանզի Բահաղին սեղանը փըլ-
ցուցեր, ու անոր քովի անտառը
31 կտրեր է ։ Եւ Յովաս՝ իր վրան
եկող բոլոր մարդիկներուն ըսաւ․
Միթէ Բահաղին իրաւունքը դո՞ւք
պիտի պաշտպանէք, կամ թէ զա-
նիկայ դո՞ւք պիտի ազատէք․ ո՛վ
որ անոր իրաւունքը պաշտպանէ,
թող մեռցուի մինչև առտու․ թէ
որ անիկայ աստուած է, թող ին-
քը իր իրաւունքը պաշտպանէ անոր
դէմ, իր սեղանը փլցընելուն հա-
32 մար ։ Եւ նոյն օրը զանիկայ ա*Յե-
րոբաաղ անուանեց․ քանզի ըսաւ․
Թող Բահաղ իր իրաւունքը պաշտ-
պանէ անոր դէմ, իր սեղանը փըլ-
ցընելուն համար ։
33 Եւ բոլոր †Մադիանացիները,
Ամաղէկացիները ու արևելքի բնա-
կիչները մէկտեղ ժողվուեցան, ու
Յորդանանէն անցնելով՝ ‡Յեզրայէլի
34 հովիտին մէջ բանակեցան ։ Եւ
°Տէրոջը Հոգին Գեդէոնին վրայ
հանգչեցաւ, ու անիկայ $փող հըն-
չեցուց․ և Աբիեզերեանք անոր ե-
35 տևէն ժողվուեցան ։ Ու բոլոր Մա-
նասէին պատգամաւորներ խրկեց,
ան ալ անոր ետևէն ժողվուեցաւ․
և Ասերին, Զաբուղոնին ու Նեփ-
թաղիմին ալ պատգամաւորներ խըր-
կեց․ ու անոնք գացին զանոնք դի-
մաւորելու ։
36 Եւ Գեդէոն Աստուծոյ ըսաւ․
Թէ որ ըսածիդ պէս Իսրայէլը իմ
37 ձեռքովս ազատելու ես, աՀա՛ ես
կալին մէջը բուրդի գզաթ մը կը
դնեմ․ թէ որ մինակ գզաթին վրայ
ցօղ՝ ու բոլոր գետնին վրայ չորու-
թիւն ըլլայ, ան ատենը պիտի գիտ-
նամ՝ որ ըսածիդ պէս Իսրայէլը իմ
38 ձեռքովս պիտի ազատես ։ Եւ այն-
պէս եղաւ․ վասն զի առաւօտուն
կանուխ ելաւ, ու գզաթը քամեց,
և գզաթէն ցօղը հանեց, որ կոնք
39 մը լեցուն ջուր ելաւ ։ Ան ատենը
Գեդէոն Աստուծոյ ըսաւ․ բՔու
բարկութիւնդ իմ վրաս չբորբոքի,
ու մինակ աս անգամ ալ խօսիմ․
միայն աս անգամ գզաթովը փոր-
ձեմ․ հիմա մինակ գզաթին վրայ
չորութիւն, ու բոլոր գետնին վրայ
40 ցօղ ըլլայ ։ Եւ ան գիշերը Աս-
տուած այնպէս ըրաւ․ մինակ գը-
զաթին վրայ չորութիւն՝ ու բոլոր
գետնին վրայ ցօղ եղաւ ։

ա Թագ․ Ժբ․ 11 ։ բ Թագ․ Ժա․ 21 ։ Տես Երեմ․ Ժա․ 13 ։ Ովս․ Թ․ 10 ։
* Այ՝ Բահաղը ջատագովութիւն թող ընէ ։
† Հմր 3 ։
‡ Յես․ ԺԷ․ 16 ։
° Գլ․ Գ․ 10 ։ ա Մն․ Ժբ․ 18 ։ բ Մն․ Իդ․ 20 ։
$ Թու․ Ժ․ 3 ։ Գլ․ Գ․ 27 ։
ա Տես Ել․ Դ․ 3, 4, 6, 7 ։
բ Ծն․ Ժը․ 32 ։

Ն․ Ք․ Գ․Ե․
իրր 1249

## ԳԼ․ Է

1 Գեդէոնի բանակին երսունըերկու հազար մարդոցմէն՝ իրեք հարիւր հոգին կ՚ընտրուին ։ 9 Գեդէոն Մադիանացիի մը երազը ու մեկնութիւնը լսելով՝ կը քաջալերուի ։ 16 Փողերով՝ ու սափորներու մէջ դրուած ջահերով՝ իր բանեցուցած հնարքը ։ 24 Եփրեմի որդիքը Օրէբը ու Զէբը կը բռնեն կը մեռցընեն ։

1 Եւ աՅերոբաաղ՝ այսինքն Գեդէ-
օնը ու անոր հետ եղող բոլոր
ժողովուրդը կանուխ ելան, Հարո-
դի աղբիւրին քովը բանակեցան․
ու Մադիամու բանակը անոր հիւ-
սիսային կողմը՝ դէպ ՚ի Մորէի
2 բլուրը՝ հովիտին մէջն էր ։ Եւ Տէրը
ըսաւ Գեդէոնին․ Քու հետդ եղող
ժողովուրդը շատ է․ չեմ ուզեր
Մադիամը անոնց ձեռքը տալ․ չըլ-
լայ որ Իսրայէլը բինծի դէմ պար-
ծենայ ու ըսէ թէ՝ Իմ ձեռքս զիս
3 ազատեց ։ Ուստի հիմա քարոզ
կարդալ տաս՝ որ ժողովուրդը լսէ,
ու ըսես․ ‡Ո՛վ որ վախասիրտ ու
երկչոտ է՝ թող ետ դառնայ, և
շուտով Գաղաադ լեռնէն երթայ․
ու ժողովուրդէն քսանըերկու հա-
զար հոգի ետ դարձան, ու տասը
4 հազար մնացին ։ Եւ Տէրը ըսաւ Գե-
դէոնին․ Ժողովուրդը տակաւին
շատ է․ ջուրին քովը իջեցուր զա-
նոնք, ու հոն քեզի համար զանոնք
փորձեմ․ և որուն համար քեզի
ըսեմ թէ՝ Ատիկայ քու հետդ եր-
թայ, անիկայ քու հետդ թող եր-
թայ, ու որուն համար քեզի ըսեմ
թէ՝ Ատիկայ քու հետդ չերթայ,
5 անիկայ թող չերթա՛յ ։ Ուստի ժո-
ղովուրդը ջուրին քովը իջեցուց․
և Տէրը Գեդէոնին ըսաւ․ Ո՛վ որ
շունի լափելուն պէս ջուրը լեզուո-
վը լափէ, անիկայ զատ կայնեցը-
նես, ու ո՛վ որ խմելու համար իր
ծունկերուն վրայ ծռի, անիկայ ալ
6 զատ կայնեցընես ։ Եւ ձեռքը բերանը
տանելով լափողներուն թիւը՝ իրեք
հարիւր մարդ էր․ և բոլոր մնացած
ժողովուրդը իրենց ծունկերուն վը-
րայ ծռեցան ջուր խմելու համար ։
7 Ու Տէրը Գեդէոնին ըսաւ․ գԱն
իրեք հարիւր մարդիկներով՝ որոնք
ջուրը լափեցին, ձեզ պիտի ազա-
տեմ, և Մադիամը քու ձեռքդ
պիտի մատնեմ․ ու բոլոր մնացած
ժողովուրդը՝ ամէն մարդ իր տեղը
8 երթայ ։ Ուստի ժողովուրդը՝ իրենց
ձեռքը պաշար առին և իրենց փո-
ղերն ալ ։ Եւ Գեդէոն Իսրայէլի

ա Գլ․ Զ․ 32 ։
բ Բ Օր․ Ը․ 17 ։ Ես․ Ժ․ 13 ։ ա Կոր․ Ա․ 29 ։ բ Կոր․ Դ․ 7 ։
‡ Բ Օր․ Ի․ 8 ։
գ Ա Թագ․ ԺԴ․ 6 ։

Ն. Ք. Գ. Ք. իբր 1249

բոլոր մարդիկները՝ ամէն մէկը իր
վրանը խրկեց, բայց ան իրեք հա-
րիւր մարդը իր քովը պահեց. ու
Մադիամու բանակը՝ անոր տակը՝
հովիտին մէջն էր։
9 Եւ նոյն ⁺գիշերը՝ Տէրը անոր ը-
սաւ. Ո՛տք ելիր, ու անկէ բանակը
իջիր. քանզի զանիկայ քու ձեռքդ
10 մատնեցի։ Եւ թէ որ դուն իջնե-
լու կը վախնաս, Նախ՝ դուն քու
ծառադ Փուրային հետ բանակը
11 իջիր. Եւ Պպիտի լսես թէ անոնք
ինչ կը խօսին. անկէ ետեւ քու
ձեռքերդ պիտի ուժովնան, որ բա-
նակը իջնես։ Ուստի ինքը և իր ծա-
ռան Փուրա՝ բանակին մէջի ⁺զուն-
12 դերուն ծայրը իջան։ Ու Մադիա-
մը, և Ամաղէկը, Բու բոլոր արեւել-
ցիները՝ մարախներու պէս բազմու-
թեամբ հովիտին մէջ պառկեր էին,
և անոնց ուղտերը անթիւ էին, ու
ծովուն եզերքը եղող աւազին չափ
13 շատ էին։ Եւ Գեդէօն հոն երթա-
լով՝ լսեց որ մէկ մարդ մը իր ընկե-
րին երազ կը պատմէր, ու կ'ըսէր.
Ես երազ մը տեսայ. և ահա մէկ
գարեղէն հաց մը դէպ 'ի Մադիամու
բանակը կը գլորուէր, և վրանի մը
հասնելով՝ զանիկայ զարկաւ, որ
ինկաւ. ու գլխիվար դարձուց, և
14 վրանը ինկաւ։ Ու անոր ընկերը
պատասխան տուաւ, և ըսաւ. Ա-
տիկայ ուրիշ բան չէ, բայց միայն
Իսրայէլացի Յովասի որդւոյն Գե-
դէօնին սուրը. Աստուած՝ Մադի-
ամը ու բոլոր բանակը անոր ձեռքը
մատներ է։
15 Ու երբոր Գեդէօն երազին պատ-
մութիւնը ու անոր մեկնութիւնը
լսեց, Տէրոջը երկրպագութիւն ը-
րաւ, և Իսրայէլին բանակը դար-
ձաւ, ու ըսաւ. Ո՛տք ելէք, քան-
զի Տէրը Մադիամու բանակը ձեր
16 ձեռքը տուեր է։ Եւ ան իրեք հա-
րիւր մարդը իրեք գունդի բաժնե-
լով՝ ամենուն ձեռքը փողեր ու
պարապ սափորներ տուաւ, և սա-
փորներուն մէջն ալ ջահեր դրաւ.
17 Ու անոնց ըսաւ. Ինծի նայեցէք՝ և
անանկ ըրէք. ու երբոր բանակին
եզերքը հասնիմ, ես ինչպէս որ
ընեմ, դուք ալ այնպէս ըրէք։
18 Ու երբոր ես ու բոլոր իմ հետս
եղողները՝ փողը հնչեցնենք, ան
ատենը դուք ալ բոլոր բանակին
չորս կողմը փողերը հնչեցուցէք, և
ըսէ՛ք. Տէրոջը ու Գեդէօնին սու-
19 րը։ Եւ Գեդէօն ու անոր հետ ե-
ղող հարիւր մարդը՝ կէս գիշե-
րուան պահուն սկիզբը՝ երբոր պա-
հապանները նոր դրած էին, բա-
նակին եզերքը հասան, և փողերը
հնչեցնելով՝ ձեռքերնուն մէջը ե-
20 ղած սափորները կոտրտեցին։ Ան
ատենը իրեք գունդն ալ փողերը
հնչեցուցին, ու սափորները կոտր-
տեցին, ու ձախ ձեռքով՝ ջահերը,
և աջ ձեռքով՝ փողերը բռնելով
հնչեցնելու համար, կը պոռային
ու կ'ըսէին. Տէրոջը ու Գեդէօնին
21 սուրը։ Եւ ⁺ամէն մարդ բանակին
բոլորտիքը՝ իր տեղը կայներ էր.
⁺ու բոլոր բանակը վազելով և ա-
22 ղաղակելով կը փախչէին։ Ու երբ-
որ ան իրեք հարիւր մարդը ⁺երեքն
փողերը հնչեցուցին, Տէրը բոլոր
բանակին մէջ ⁺ամէն մարդուն
սուրը ⁺իր ընկերին վրայ դարձուց.
և զօրքը մինչև Բեթասետան՝ դէպ 'ի
Սարերան, ու մինչև Աբէլմաուլա-
յին սահմանը ⁺Տաբէթը փախաւ։
23 Ու Իսրայէլացիք՝ Նեփթաղիմէն,
Ասերէն և բոլոր Մանասէէն ժող-
վուեցան, ու Մադիանացւոց ե-
24 տեւէն ինկան։ Եւ Գեդէօն ⁺Եփ-
րեմի բոլոր լեռնակողմը պատգա-
մաւորներ խրկեց, ըսելով. Մա-
դիանացիները դիմաւորելու իջէք,
և անոնց առջևէն ջուրերը բռնեցէք
մինչև Բեթբարա, նաև Յորդա-
նանը։ Ուստի Եփրեմի բոլոր մար-
դիկները ժողվուեցան, ու ⁺ջուրերը
բռնեցին մինչև ⁺Բեթբարա, նաև
25 Յորդանանը։ Եւ ⁺Մադիամու եր-
կու իշխանները Օրէբը ու Զէբը
բռնեցին. Օրէբը՝ ⁺Օրէբի վէմին
քովը մեռցուցին, ու Զէբը՝ Զէ-
բի հնձանին քովը մեռցուցին. և
Մադիանացիները հալածեցին, ու
Օրէբին և Զէբին գլուխները՝ Գե-
դէօնին բերին ⁺Յորդանանու ան-
դին կողմէն։

Բ Եւ. ժդ. 13, 14։ բ Մն. ի. 17։ ժդ Թագ. է. 7։ Յես. զ. 4. 16. 20։ Տես բ Կոր. դ. 7։ Լ ա Թագ. ժդ. 20։ ր Մն. ի. 23։ Սաղ. ձդ. 9։ Ես. թ. 4։ Գլ. գ. 27։ Գլ. գ. 28։ Յով. ա. 28։ Գլ. ը. 3։ Սաղ. ձդ. 11։ Ես. ժ. 26։ Գլ. ը. 4։

Ն. Ք. Գ. Ք. իբր 1249

Ի Ծն. խզ. 2, 3։ Դ Հմր 13, 14, 15։ Տես Ծն. իդ. 14։ ա Թագ. ժդ. 9, 10։ Ի Եւ. ժգ. 18։ Բ Գլ. զ. 5. 33։ ը. 10։

## ԳԼ. Ը

1 Գեդէօն Եփրեմի որդւոց սիրտը կ'իջեցնէ։ 4 Սոկքովթի ու Փանուելի բնակիչները Գեդէօնին զօրքը կերակրելը կը մերժեն։ 10 Գեդէօն կը բռնէ Զեբէէն ու Սաղմանան. 13 և դառնալով՝ Սոկքովթի ու Փանուելի բնակիչները կը ջարդէ։ 17 Գեդէօն իր եղբայրներուն մահուանը վրէժը Զեբէէն ու Սաղմանայէն կ'առնէ. 22 և չհաճիր ժողովուրդին վրայ իշխան ըլլալու։ 24 Անոր շինած եփուտը կռապաշտութեան պատճառ կ'ըլլայ։ 28 Մադիամ կը նուաճի։ 29 Գեդէօնին որդիքը, ու իր մահը։ 33 Իսրայէլացւոց կռապաշտութիւնը ու ապերախտութիւնը։

1 Ու ⁺Եփրեմեանք անոր ըսին. Աս
մեզի ըրած բանդ ի՞նչ պիտի ըլ-
լայ, որ Մադիամու դէմ պատե-
րազմելու գացիր, և մեզ չկանչե-
ցիր. ու անոր հետ սաստիկ վէճ
2 ըրին։ Եւ անիկայ անոնց ըսաւ.
Ես հիմա ձեզի պէս ի՞նչ բան ըրի.
Եփրեմին ճռաքաղութիւնը՝ Աբիե-
զերի այգեկութէն լաւագոյն չէ՞
3 արդեօք։ ⁺Աստուած Մադիամու
իշխանները՝ Օրէբը ու Զէբը ձեր
ձեռքը տուաւ. ես ձեզի պէս ի՞նչ

Տես Գլ. ժբ. 1։ բ Թագ. ժթ. 41։ Գլ. է. 24. 25։ Փիլ. բ. 3։

Ն. ք. գՔ. եբր 1249

բան կրցայ ընել ։ Ալ խօսքը ը-
սածին պէս՝ ձանոնց սիրտը հան-
դարտեցաւ ։
4 Եւ Գեդէոն Յորդանան եկաւ ,
ու ինքը և իր հետը եղող երեք հա-
րիւր մարդիկը անցան . թէպէտ և
նուաղած էին , բայց հալածելով կը հա-
5 լածէին ։ Ու ե Սոկքովթի մարդիկ-
ներուն ըսաւ . Շնորհք ըրէք ,
ետեւս եկող ժողովուրդին հացի
նկանակներ տուէք , քանզի նուա-
ղած են . ու ես Մադիամու թագա-
ւորներուն՝ Զեբէէին ու Սաղմա-
նային ետեւէն ինկեր կը հալածեմ ։
6 Եւ Սոկքովթի իշխանները ըսին .
է Միթէ Զեբէէին ու Սաղմանային
ձեռքը արդէն քու ձեռքիդ մէ՞ջն
է , որ զ մենք քու զօրքիդ հաց
7 տանք ։ Ու Գեդէոն ըսաւ . Ու-
րեմն երբոր Տէրը Զեբէէն ու
Սաղմանան իմ ձեռքս տայ , է ձեր
մարմինները անապատին փու-
շերովը ու տատասկներովը պի-
8 տի ծեծեմ ։ Եւ անկէ ը Փա-
նուէլ ելաւ , ու անոնց ալ այնպէս
ըսաւ . բայց Փանուէլի մարդիկները՝
Սոկքովթի մարդիկներուն տուած
պատասխանին պէս՝ պատասխան
9 տուին ։ Ու Փանուէլի մարդիկ-
ներուն ալ խօսեցաւ , ըսելով .
Երբոր Ի խաղաղութեամբ դառնամ,
ժ աս աշտարակը պիտի փլցնեմ ։
10 Եւ Զեբէէ ու Սաղմանա , և ա-
նոնց հետ անոնց բանակը , որ Խա-
րեւելքի բնակիչներուն բոլոր բանա-
կէն մնացած մարդը՝ ամէնը տասնը-
հինգ հազարի չափ մօտ Կարկարի
մէջ էին . ու ինկած մեռածները՝
լ հարիւր քսան հազար սուսերա-
11 մերկ մարդիկներ էին ։ Եւ Գեդէոն
ի Նոբահի ու Յօգբէհայի արեւելեան
կողմէն՝ վրանաբնակներուն ճամ-
բովը ելաւ , ու բանակը զարկաւ .
քանզի բանակը ծ անհոգ կը կենար ։
12 Եւ Զեբէէն ու Սաղմանան փա-
խան . ու Գեդէոն անոնց ետեւէն
իյնալով՝ կ Մադիամու երկու թա-
գաւորները՝ Զեբէէն ու Սաղմանան
բռնեց , ու բոլոր բանակը տակնու-
վրայ ըրաւ ։
13 Եւ Յովասին որդին Գեդէոնը՝
*արեւ չելած" պատերազմէն ետ
14 դարձաւ . Ու Սոկքովթի մարդիկ-
ներէն երիտասարդ մը բռնեց , և
անոր հարցուց . ու անիկա՝ Սոկ-
քովթի իշխանները ու ծերերը՝ եօ-
թանասունեօթը մարդ գրեց՝
15 տուաւ անոր ։ Եւ Գեդէոն Սոկ-
քովթի բնակիչներուն եկաւ , ու
ըսաւ . Ահա Զեբէէն ու Սաղմա-
նան՝ որոնց համար հ զիս նախատե-
ցիք՝ ըսելով . Միթէ Զեբէէին ու
Սաղմանային ձեռքը արդէն քու
ձեռքիդ մէ՞ջն է , որ մենք քու
նուաղած մարդիկներուդ հաց
16 տանք ։ յ Ուստի քաղաքին ծերե-
րը առաւ , և անապատէն փուշեր
ու տատասկներ բերաւ , և անոնց-
մով Սոկքովթի մարդիկները պատ-
17 ժեց ։ Ու ն Փանուէլի ճաշտա-
րակը փլցուց , և քաղաքին մար-
դիկները կոտորեց ։
18 Ու Զեբէէին և Սաղմանային ը-
սաւ . ՛ Թաբորի մէջ մեռցուցած
մարդիկներնիդ ի՞նչպէս մարդիկներ
էին ։ Ու անոնք ըսին . Ինչպէս ես
դուն , անոնք ալ այնպէս էին . ա-
մէն մէկը թագաւորի տղու կը նմա-
19 նէր ։ Եւ անիկայ ըսաւ . Անոնք
իմ եղբայրներս՝ մօրս տղաքներն
էին . կենդանի է Տէր , թէ որ
դուք զանոնք ողջ թողուիք , ես
20 ձեզ չէի մեռցըներ ։ Ու իր անդ-
րանիկ տղուն՝ Յեթերին ըսաւ .
Ելի՛ր , ասոնք մեռցո՛ւր ։ Բայց պա-
տանին իր սուրը չքաշեց . քանզի
մանկահասակ ըլլալով՝ վախցաւ ։
21 Ուստի Զեբէէ ու Սաղմանա ըսին .
Դո՛ւն ելի՛ր որ մեզ զարնես . քանզի
մարդուս ուժը իր հասակին համե-
մատ կ'ըլլայ . և Գեդէոն ոտք ելաւ,
ու ջ Զեբէէն և Սաղմանան մեռցուց .
ու անոնց ուղտերուն պարանոցին
վրայ եղած մահիկները առաւ ։
22 Եւ Իսրայէլի մարդիկները Գե-
դէոնին ըսին . Մեր վրայ թագա-
ւորէ , դուն ու քու որդիդ և քու
որդւոյդ որդին . որովհետեւ մեզ
Մադիամու ձեռքէն ազատեցիր ։
23 Ու Գեդէոն անոնց ըսաւ . Ես ձեր
վրայ չեմ թագաւորեր , ոչ ալ իմ
որդիս ձեր վրայ պիտի թագաւորէ .
ն ձեր թագաւորը Տէրը ըլլայ ։
24 Եւ Գեդէոն անոնց ըսաւ .
Ձեզմէ բան մը պիտի խնդրեմ .
ամէն մարդ իր աւարին օղերը ինծի
տայ . ( ն քանզի անոնք Իսմայէլացի
25 ըլլալով՝ ոսկիէ օղեր ունէին ։ ) Ու
անոնք ըսին . Բոլոր սրտով կու
տանք . ուստի լաթ մը փռեցին ,
ու ամէն մարդ իր աւարին օղերը
26 հոն ձգեց ։ Եւ ան իր ուզած ոսկի
օղերուն կշիռքը՝ հազար եօթը հա-
րիւր սիկղ ոսկի եղաւ . մահիկնե-
րէն , զինտերէն , ու Մադիամու
թագաւորներուն վրայի ծիրանի
պատմուճաններէն , և անոնց ուղ-
տերուն պարանոցին վրայ եղած
27 մանեակներէն 'ի զատ ։ Ու Գեդէ-
ոն ո անոնցմով եփուտ մը շինեց , և
ն իր Եփրա քաղաքին մէջը դրաւ .
ու բոլոր Իսրայէլը ղ հոն անոր ե-
տեւէն երթալով՝ պոռնկեցաւ . և
Գեդէոնին ու անոր տանը Նորո-
գայթ եղաւ ։
28 Այսպէս Մադիամ՝ Իսրայէլի որ-

---

Left margin notes:

գ Առակ. ժե. 1 ։
դ Ծն. լգ. 17 ։ Սաղ. կ. 6 ։
ե Տես գ Թագ. ի. 11 ։
զ Տես ... Թագ. իե. 11 ։
է Հմր 16 ։
ը Ծն. լբ. 30 ։ գ Թագ. ժբ. 25 ։
Ի գ Թագ. իբ. 27 ։
ժ Հմր 17 ։
ի Գւ. է. 12 ։
լ Գւ. ի. 2, 15, 17, 25 ։ դ Թագ. գ. 26 ։
խ Թու. լբ. 35, 42 ։
ծ Գւ. ժը. 27 ։ ա Թես. ե. 3 ։
կ Սաղ. ձգ. 11 ։
* կամ՝ Արեւ-ուն զառ 'ի վերէն
հ Հմր 6 ։

Right margin notes:

Ն. ք. գՔ. եբր 1249
յ Հմր 7 ։
ն գ Թագ. ժբ. 25 ։
ճ Հմր 9 ։
՛ Գւ. դ. 6 ։ Սաղ. ձթ. 12 ։
ջ Սաղ. ձգ. 11 ։
ն ա Թագ. ը. 7 ։ ժ. 19 ։ ժբ. 12 ։
ն Ծն. իե. 13 ։ լէ. 25, 28 ։
ո Գւ. ժէ. 5 ։
ն Գւ. գ. 24 ։
ղ Սաղ. ճզ. 39 ։
չ բ Օր. է. 16 ։

դուոց առջևը նուաճեցաւ . և այ-
նուհետև չկրցաւ գլուխ վերցնել .
ու Գեդէոնին օրերը՝ երկիրը
քառասուն տարի հանգստացաւ ։
29 Եւ Յովասին որդին Յերոբաաղը
գնաց , ու իր տանը մէջ նստաւ ։
30 Եւ Գեդէոն եօթանասուն տղայ
ունէր իր երանքէն ելած . քանզի շատ
31 կնիկներ ունէր ։ Ու Սիւքեմի մէջ
ունեցած հարճն ալ անոր տղայ մը
ծնաւ , և անոր անունը Աբիմելէք
32 դրաւ ։ Ու Յովասին որդին Գե-
դէոն՝ բարի ծերութեամբ մեռաւ ,
և Աբիեզերեանց Եփրային մէջը՝
իր հօրը Յովասին գերեզմանը թա-
ղուեցաւ ։
33 Եւ Գեդէոն մեռածին պէս՝ Իս-
րայէլի որդիքը դարձան ու Բա-
հաղիմին ետևէն երթալով՝ պոռնկե-
ցան , ու Բահաղ բերիթը իրենց
34 աստուած ըրին ։ Եւ Իսրայէլի
որդիքը չյիշեցին իրենց Տէր Աս-
տուածը , որ զիրենք ազատեր էր
իրենց բոլորտիքը եղած ամէն թըշ-
35 նամիներուն ձեռքէն ։ Ու Յերո-
բաաղին ( այսինքն Գեդէոնին ) տա-
նը՝ անոր Իսրայէլին ըրած բոլոր
բարութեանը համեմատ , գթու-
թիւն չըրին ։

Ն. Ք. Ա. Գ. Ք. Իրր 1249 | Գլ. Ե. 31։ | Գլ. Թ. 2, 5։ | Գլ. Թ. 1։ | Իրր 1209 | Ծն. ԻԵ. 8։ Յոբ. Ե. 26։ | Հմր 27։ Գլ. Զ. 24։ | Գլ. Բ. 19։ | Գլ. Բ. 17։ | Գլ. Թ. 4, 46։ | Սաղ. Հը. 11, 42։ Ճզ. 13, 21։ | Գլ. Թ. 16, 17, 18։ Ժող. Թ. 14, 15։

## ԳԼ. Թ

1 Աբիմելէք Սիւքեմացւոց հետ խորհուրդ ընե-
լով՝ ու իր եղբայրները սպաննելով՝ թագաւոր
կ'ըլլայ ։ 7 Յովաթամ առակով մը զանոնք
կը յանդիմանէ , ու անոնց կործանումը կը
գուշակէ ։ 22 Գաաղ՝ Սիւքեմացւոց հետ կը
միաբանի Աբիմելէքին դէմ ։ 30 Զեբուղ՝ աս
բանը անոր կ'իմացընէ . 34 Աբիմելէք զանոնք
կը յաղթէ , ու աղ կը ցանէ քաղաքը . 46
Բերիթ աստուծոյն աշտարակը կ'այրէ . 50
Թեբեսի մէջ երկանաքարի կտորով մը կ'ըս-
պաննուի ։ 56 Յովաթամին անէծքը կը կա-
տարուի ։

1 Ու Յերոբաաղին տղան Աբիմելէ-
քը՝ Սիւքեմ իր մօրը եղբայր-
ներուն գնաց . և անոնց հետ՝ ու իր
մօրը հօրը բոլոր ազգատոհմին հետ
2 խօսեցաւ , ըսելով . Շնորհք ըրէք՝
Սիւքեմի բոլոր *բնակչացը ականջ-
ներուն զրուցեցէ՛ք թէ՝ Ձեզի ո՞րը
աղէկ է . Յերոբաաղին բոլոր որ-
դւոցը՝ եօթանասուն մարդոց ձեր
վրայ թագաւորե՞լը , թէ մէկ մար-
դուն ձեր վրայ թագաւորելը . և
միտքերնիդ բերէք , որ ես ձեր ոս-
3 կորը ու ձեր մարմինն եմ ։ Ուստի
իր մօրը եղբայրները՝ անոր վրայով
ամէն աս խօսքերը Սիւքեմի բոլոր
բնակչացը ականջներուն զրուցե-
ցին . ու անոնց սիրտը Աբիմելէքին
դարձաւ . քանզի ըսին թէ՝ Անիկայ
4 մեր եղբայրն է ։ Եւ Բահաղ
բերիթին տունէն եօթանասուն
կտոր արծաթ տուին անոր . ու
Աբեմելէք՝ անոնցմով դատարկա-

Գլ. Ը. 31։ | *Եբր. տէ-րերուն | Գլ. Ը. 30։ | Ծն. ԻԹ. 14։ | Ծն. ԻԹ. 15։ | Գլ. Ը. 33։ | Գլ. ԺԱ. 3։ Բ Մն. ԺԳ. 7։ Առակ. ԺԲ. 11։ Գոր. ԺԷ. 5։

կեաց ու սրիկայ մարդիկներ վարձ-
քով բռնեց . և անոր ետևէն գացին ։
5 Ու Եփրայի մէջ իր հօրը տունը
մտաւ . և իր եղբայրները Յերո-
բաաղին որդիքը՝ եօթանասուն հո-
գին մէկ քարի մը վրայ սպաննեց .
բայց Յերոբաաղին պզտիկ տղան
Յովաթամը՝ պահուելով ողջ մնաց ։
6 Ետքը բոլոր Սիւքեմի բնակիչները ,
և Մելոնին բոլոր տունը՝ մէկտեղ
ժողվուեցան , ու գացին Սիւքեմի
մէջ †արձանի կաղնիին քովը Ա-
բիմելէքը թագաւոր ըրին ։
7 Ու երբոր ասոնք Յովաթամին
իմացուցին , անիկայ գնաց Գա-
րիզին լեռանը գլուխը կայնեցաւ ,
և ձայնը վերցընելով պոռաց՝ ու ա-
նոնց ըսաւ . Ո՛վ Սիւքեմի բնակիչ-
ներ՝ ինծի մտիկ ըրէք , և Աստուած
8 ձեզի մտիկ ընէ ։ Ծառերը գացին՝
որ իրենց համար թագաւոր մը օ-
ծեն . ու ձիթենիին ըսին . Մեր
9 վրայ թագաւո՛ր եղիր ։ Բայց ձի-
թենին անոնց ըսաւ . Իմ պարարտ-
տութիւնս թողում , ‡որ ինծ-
մով զԱստուած ու մարդիկները կը
պատուեն" , ու երթամ ծառերուն
10 վրայ ‖իշխա՞ն ըլլամ" ։ Եւ ծառե-
րը թզենիին ըսին . Դո՛ւն եկուր մեր
11 վրայ թագաւոր եղիր ։ Եւ թզե-
նին անոնց ըսաւ . Իմ քաղցրու-
թիւնս՝ ու աղէկ պտուղս թողում ,
ու երթամ ծառերուն վրայ իշխա՞ն
12 ըլլամ ։ Ան ատենը ծառերը որթին
ըսին . Դո՛ւն եկուր մեր վրայ թա-
13 գաւոր եղիր ։ Որթն ալ անոնց ը-
սաւ . զԱստուած ու մարդիկնե-
րը ուրախացընող գինիս թողում ,
ու երթամ ծառերուն վրայ իշխա՞ն
14 ըլլամ ։ Ան ատենը ամէն ծառերը
դժնիկին ըսին . Դո՛ւն եկուր մեր
15 վրայ թագաւոր եղիր ։ Եւ դժնիկը
ծառերուն ըսաւ . Թէ որ դուք ի-
րաւցընէ զիս ձեր վրայ թագաւոր
կ'օծէք , եկէ՛ք իմ ¦հովանիիս տա-
կը նստէք , եթէ ոչ՝ դժնիկէն կը-
րակ թող ելլէ ; ու Լիբանանու
16 եղեւինները այրէ ։ Եւ հիմա թէ
որ դուք՝ Աբիմելէքը թագաւոր ը-
նելով՝ ճշմարտութեամբ ու արդա-
րութեամբ վարուեցաք , և թէ որ
Յերոբաաղին ու անոր տանը բարու-
թիւն ըրիք , և թէ որ անոր գործ-
քերուն համեմատ անոր հատու-
17 ցում ըրիք . ( Քանզի իմ հայրս ձե-
զի համար պատերազմ ըրաւ , ու իր
անձը §վտանգի մէջ դրաւ" , և ձեզ
18 Մադիամու ձեռքէն ազատեց . իսկ
դուք այսօր իմ հօրս տանը դէմ
ոտք ելաք , ու անոր որդիքը՝ եօ-
թանասուն մարդ մէկ քարի մը վը-
րայ սպաննեցիք . ու անոր աղա-
խինին տղան Աբիմելէքը՝ ձեր եղ-

Ն. Ք. Ա. Գ. Ք. 1209 | Գլ. Գ. 24։ | Դ Թագ. ԺԱ. 1, 2։ | Տես Յես. ԻԴ. 26։ | †Կամ՝ կա-յարանի | Բր Օր. ԺԱ. 29։ ԻԷ. 12։ Յես. Ը. 33։ Յով. Դ. 20։ | Տես Դ Թագ. ԺԴ. 9։ | Գլ. Ը. 22, 23։ | Սաղ. ՃԴ. 15։ | ‡Կամ՝ որուն համար Աստուած ու մարդիկ զիս կը պատուեն, | ‖Եբր. երե-րամ՞մ։ | Սաղ. ՃԴ. 15։ | ¦Ես. Լ. 2։ Դան. Դ. 12։ Ովս. ԺԴ. 7։ | Հմր 20։ Թուղ. ԻԱ. 28։ Եզեկ. ԺԹ. 14։ | Դ Թագ. ԺԴ. 9։ Սաղ. ՃԴ. 16։ Ես. Բ. 13։ ԼԷ. 24։ Եզեկ. Լս. 3։ | Գլ. Ը. 35։ | §Եբր. առ-ջևը ձգեց, | Հմր 5, 6։

Ն. Ք. Գ. Ք.
Իրր 1206

բայրը ըլլալուն համար՝ Սիւքեմի
բնակչացը վրայ թագաւոր ըրիք .)
19 Ուստի թէ որ այսօր Յերոբաաղին
ու անոր տանը վրայով ճշմարտու-
թեամբ ու արդարութեամբ վա-
րուեցաք, ^ա Աբիմելէքին վրայ ու-
րախացէ՛ք, ան ալ ձեր վրայ թող
20 ուրախանայ. Ապա թէ ոչ՝ ^բ թող
Աբիմելէքէն կրակ ելլէ, և Սիւքեմի
բնակիչները ու Մելոնի տունը այրէ.
և Սիւքեմի բնակիչներէն ու Մելոնի
տունէն կրակ ելլէ, և Աբիմելէքը
21 այրէ: Ետքը Յովաթամ փախաւ
ազատեցաւ, ու ^գ Բէէր գնաց, և իր
Աբիմելէք եղբօրմէն վախնալուն հա-
մար՝ հոն բնակեցաւ:
22 Եւ Աբիմելէք Իսրայէլի վրայ ի-
23 րեք տարի թագաւորեց: Ու ^դ Աս-
տուած Աբիմելէքին և Սիւքեմի բը-
նակիչներուն մէջ չար ոգի մը խըր-
կեց. ու Սիւքեմի բնակիչները՝ Ա-
բիմելէքին հետ ^ե նենգութեամբ
24 վարուեցան. ^զ Որպէս զի Յերոբա-
աղին եօթանասուն որդւոցը եղած
անիրաւութիւնը գայ՝ և անոնց
թափուած արիւնը անոնց եղբօրը
Աբիմելէքին վրայ հասնի, որ զա-
նոնք սպաններ էր, ու Սիւքեմի
բնակչացը վրայ՝ որոնք անոր ձեռ-
քերը ուժովցուցեր էին իր եղբայր-
25 ները սպաննելու: Ուստի Սիւքեմի
բնակիչները՝ լեռներուն գլուխները
անոր դարաններ պատրաստեցին, և
ճամբան իրենց քովէն ամէն անց-
նողները կը թալլէին. ու աս բանը
26 Աբիմելէքին իմացուցին: Եւ Աբե-
դի որդին Գաաղը ու անոր եղբայր-
ները եկան՝ Սիւքեմի մէջ մտան. և
Սիւքեմի բնակիչները անոր ապա-
27 ւինեցան. Ու դաշտը ելլելով՝ ի-
րենց այգիներուն խաղողները քա-
ղեցին, և կոխելով ^է ուրախութիւն
ըրին. ու ^ը իրենց աստուծոյն տու-
նը մտնելով՝ կերան ու խմեցին, և
28 Աբիմելէքը անիծեցին: Ու Աբե-
դեան Գաաղը ըսաւ. ^թ Աբիմելէքը
ո՞վ է, և Սիւքեմը ո՞վ է՝ որ մենք
անոր ծառայ ըլլանք. անիկայ Յե-
րոբաաղին տղան չէ՞, ու Զեբուղը
անոր փոխանորդը չէ՞: ^ժ Սիւքեմի
հօրը՝ Եմովրին մարդիկներուն ծա-
ռայութիւն ըրէք. ու մենք ինչո՞ւ
համար անոր պիտի ծառայենք:
29 ^ի Երանի՜ թէ աս ժողովուրդը իմ
ձեռքիս տակը անցնէր, ու ես Աբի-
մելէքը վերցնէի. և Աբիմելէքին
ըսաւ. Զօրքերդ շատցո՛ւր, ու ե-
լի՛ր:
30 Եւ քաղաքին իշխանը Զեբուղ՝
երբոր Աբեդեան Գաաղին խօսքերը
31 լսեց, խիստ բարկացաւ. Եւ ծա-
ծուկ կերպով մը Աբիմելէքին պատ-
գամաւորներ խրկեց, ըսելով. Ահա

ա Եւ. Բ. 6: Փիլ. Գ. 3:
բ Հմր 15, 56, 57:
գ Բ Թագ. Ի. 14:
Իրր 1206
դ Ա Թագ. ԺԶ. 14: ԺԸ. 9, 10: Տես Գ Թագ. ԺԲ. 15: ԻԲ. 22: Բ Մն. Ժ. 15: ԺԸ. 19, 22: Ես. ԺԹ. 2, 14:
ե Ես. ԼԳ. 1:
զ Գ Թագ. Բ. 32: Եսթ. Թ. 25: Սաղ. Է. 16: Մատ. ԻԴ. 35, 36:
է Տես Ես. ԺԶ. 9, 10: Երեմ. ԻԵ. 30:
ը Հմր 4:
թ Ա Թագ. ԻԵ. 10: Գ Թագ. ԺԲ. 16:
ժ Ծն. ԼԴ. 2, 6:
ի Բ Թագ. ԺԵ. 4:

Աբեդեան Գաաղը ու իր եղբայր-
ները Սիւքեմ եկան, և ահա անոնք
քեզի դէմ քաղաքը ոտք կը հանեն:
32 Ուստի հիմա դուն գիշերով ելի՛ր,
ու դաշտը դարանի մէջ նստէ՛ քու
33 հետդ եղող ժողովուրդով. Եւ ա-
ռաւօտուն արևը ծագածին պէս՝
կանուխկեկ ելի՛ր, ու [illegible] քա-
ղաքին վրայ յարձակէ՛ և ահա ա-
նիկայ, ու անոր հետ եղող ժողո-
վուրդը քեզի դէմ պիտի ելլեն.
ան ատենը ^լ ձեռքէդ եկածը ընես
անոր:
34 Ուստի Աբիմելէք և անոր հետը
եղող բոլոր ժողովուրդը գիշերով
ելան, ու չորս գունդի բաժնուելով՝
Սիւքեմի դէմ դարանի մէջ նստան:
35 Եւ Աբեդեան Գաաղը ելաւ, ու
քաղաքին դրանը առջին կայնեցաւ.
և Աբիմելէք՝ իր հետը եղող ժողո-
վուրդով դարաններէն դուրս ելաւ:
36 Ու Գաաղ ան ժողովուրդը տեսնե-
լով՝ Զեբուղին ըսաւ. Ահա՛ լեռ-
ներուն գլխէն ժողովուրդ կ'իջնէ:
Ու Զեբուղ անոր ըսաւ. Լեռնե-
րուն շուքը քեզի մարդոց պէս կ'ե-
37 րեւնայ: Եւ Գաաղ դարձեալ խօ-
սեցաւ, ու ըսաւ. Ահա՛ երկրին
*բարձր տեղուանքներէն" ժողո-
վուրդ կ'իջնէ. և մէկ գունդ մըն
ալ ^խ Մէօնէնիմի կաղնիին ճամբովը
38 կու գայ: Ու Զեբուղ անոր ըսաւ.
Ո՞ւր է ան քու բերանդ, որով
^ծ կ'ըսէիր թէ՝ Աբիմելէքը ո՞վ է՝ որ
մենք անոր ծառայութիւն ընենք.
քու վար զարկած ժողովուրդդ ա-
նիկայ չէ՞. հիմա ելի՛ր ու անոր հետ
39 պատերազմ ըրէ: Ուստի Գաաղ՝
Սիւքեմի բնակչացը առջևէն ելլե-
լով՝ Աբիմելէքի հետ պատերազմ
40 ըրաւ: Եւ Աբիմելէք զանիկայ հա-
լածեց. ու անիկայ անոր առջևէն
փախաւ. ու մինչև դրանը առջին
41 շատերը մեռած ինկան: Եւ Աբի-
մելէք Արումայի մէջ նստաւ. ու
Զեբուղ՝ Գաաղը և անոր եղբայր-
ները վռնտեց, որ [illegible] Սիւ-
42 քեմի մէջ չբնակին: Եւ հետևեալ
օրը՝ ժողովուրդը դաշտը ելաւ. ու
43 երբոր Աբիմելէք իմացաւ, իր ժո-
ղովուրդը առաւ՝ իրեք գունդի
բաժնեց, և դաշտին մէջը դարանա-
մուտ եղաւ. ու երբ տեսաւ որ ժո-
ղովուրդը քաղաքէն դուրս կ'ելլէ,
անոնց վրայ յարձակելով՝ զանոնք
44 զարկաւ: Եւ Աբիմելէք ու անոր
հետ եղող գունդը յարձակելով՝
քաղաքին դրանը առջին կայնե-
ցան. ու երկու գունդերը բոլոր
դաշտի մէջ եղողներուն վրայ յար-
45 ձակելով՝ զանոնք զարկին: Եւ Ա-
բիմելէք ան բոլոր օրը քաղաքին
հետ պատերազմեցաւ, ու ^մ քաղաքը

Ն. Ք. Գ. Ք.
Իրր 1206
լ Ա Թագ. Ժ. 7: ԻԵ. 8: Ժող. Թ. 10:
* Եբր. պորտէն
խ Օր. ԺԸ. 14:
ծ Հմր 28, 29:
մ Հմր 20:

Ն. Ք. ԳՔ.
Իսր 1206

ՙ Բ Օր. ԻԹ. 23 ։ Գ Թագ. ԺԲ. 25 ։ Դ Թագ. Գ. 25 ։
ՙՙ Գլ. Ը. 33 ։
ՙ Սաղ. ԿԸ. 14 ։
ՙ Բ Թագ. ԺԱ. 21 ։
ՙ Տես Ա Թագ. ԼԱ. 4 ։
Բ Հմր 24 ։ Յոբ. ԼԱ. 3 ։ Սաղ. ԴԴ. 23 ։ Առակ. Ե. 22 ։
Գ Հմր 20 ։

առաւ, և մէջը եղող մարդիկները
կոտրեց, ու ՙքաղաքը փլցուց, և
հոն աղ ցանեց ։
46 Ու Սիւքեմի աշտարակին բոլոր
բնակիչները երբոր ասիկա լսեցին,
ՙԲերիթ աստուծոյն տանը բերդը
47 մտան ։ Եւ Աբիմելէքին իմացուցին
թէ՝ Սիւքեմի աշտարակին բոլոր
48 բնակիչները ժողվուեր են ։ Ան ա-
տենը Աբիմելէք՝ իր հետը եղող
բոլոր ժողովուրդով ՙՍելմոն լեռը
ելաւ. ու Աբիմելէք տապարը ձեռ-
քը առնելով՝ ծառի ոստ մը կտրեց,
ու զանիկայ վերցուց իր ուսին վրայ
դրաւ, և իր հետը եղող ժողովուր-
դին ըսաւ. Ահա տեսաք ինչ որ ես
ըրի, շուտով դուք ալ ինծի պէս
49 ըրէք ։ Ուստի ժողովուրդին ամէնն
ալ մէյմէկ ոստ կտրեցին, ու Աբի-
մելէքին ետեւէն գացին, և ասոնք
բերդին քովը դրին, ու անոնցմով
բերդը կրակով այրեցին. այսպէս
Սիւքեմի աշտարակին բոլոր մար-
դիկներն ալ՝ որոնք հազարի չափ
էրիկ ու կնիկ մարդիկ էին, մեռան ։
50 Եւ Աբիմելէք Թեբէս գնաց, ու
Թեբէսը պաշարեց, ու զանիկայ
51 առաւ ։ Եւ քաղաքին մէջտեղը
մէկ ամուր աշտարակ մը կար. ու
քաղաքին բոլոր բնակիչները՝ թէ
էրիկ և թէ կնիկ մարդիկները հոն
փախան, դուռը ներսէն գոցեցին,
52 ու աշտարակին տանիքը ելան ։ Եւ
Աբիմելէք մինչեւ աշտարակը գնաց,
ու անոր հետ պատերազմ ըրաւ, և
աշտարակին դրանը մօտեցաւ՝ որ
53 զանիկայ կրակով այրէ ։ Ու կնիկ
մը ՙԱբիմելէքին գլխուն վրայ եր-
կանաքարի կտոր մը նետեց, և ա-
54 նոր գագաթը կոտրեց ։ Ու ՙանի-
կայ շուտով իր զէնքերը կրող երի-
տասարդը կանչեց՝ և անոր ըսաւ.
Սուրդ քաշէ՛, ու զիս մեռցո՛ւր.
չըլլայ որ ինծի համար ըսեն թէ՝
Զանիկայ մէկ կնիկ մը մեռցուց ։
Եւ երիտասարդը զանիկայ սրով խո-
55 ցեց, ու մեռաւ ։ Ու Իսրայէլի
մարդիկները՝ Աբիմելէքին մեռնիլը
տեսնելով, ամէն մարդ իր տեղը
գնաց ։
56 ԲԱյսպէս Աստուած Աբիմելէքին
գլուխը դարձուց ան չարութիւնը,
որն որ անիկայ իր հօրը ըրեր էր, իր
եօթանասուն եղբայրները սպաննե-
57 լով ։ Եւ Սիւքեմի մարդոցը բոլոր
չարութիւնը՝ Աստուած անոնց
գլուխը դարձուց. ու ԳՅերոբաաղի
որդւոյն Յովաթամին անէծքը ա-
նոնց վրայ եկաւ ։

ԳԼ. Ժ

1 Թովղա՝ Սամիրի մէջ ժողովուրդը կը դատէ. 3 ետքը Յայիրը, որուն երսուն որդիքը երսուն քաղաք ունէին ։ 6 Փղշտացիք և Ամմոնացիք Իսրայէլը կը նեղեն, 10 որոնց նեղ ժամանակին Աստուած զանոնք իրենց լաստուածներուն կը խրկէ. 15 բայց երբոր կը զղջան՝ անոնց կ'ողորմի ։

1 Եւ Աբիմելէքէն ետքը՝ Իսաքա-
րեան Դովդայի որդւոյն Փուայի
որդին Թովղան ՙելաւ՝ Իսրայէլը
ազատելու համար. ու անիկայ Եփ-
րեմի լեռը՝ Սամիրի մէջ կը բնակէր ։
2 Եւ Իսրայէլի մէջ քսանուերեք տա-
րի դատաւորութիւն ըրաւ. ու մե-
ռաւ, և Սամիրի մէջ թաղուեցաւ ։
3 Ու անկէ ետեւ Գաղաադացի Յա-
յիրը ելաւ, և Իսրայէլի մէջ քսան-
ուերկու տարի դատաւորութիւն
4 ըրաւ ։ Ու անիկայ երսուն որդի
ունէր, որոնք Բերսուն աւանակի
վրայ կը հեծնէին. և անոնք Գա-
ղաադու երկրին մէջ երսուն քա-
ղաք ունէին, Գորոնք մինչեւ աս օրս
ԴՅայիրի գիւղաքաղաքները կ'ը-
5 սուին ։ Եւ Յայիրը մեռաւ, ու
Կամոնի մէջ թաղուեցաւ ։
6 Եւ ԵԻսրայէլի որդիքը նորէն Տէ-
րոջը առջեւ չարութիւն ըրին,
Զու Բահաղիմը և Աստարովթը, ու
ԷԱսորւոց աստուածները, ԸԵւ Սի-
դոնի աստուածները, ու Մովաբի
աստուածները, և Ամմոնի որդւոցը
աստուածները, ու Փղշտացւոց աս-
տուածները պաշտեցին. և Տէրը
թողուցին, ու անոր ծառայու-
7 թիւն չըրին ։ Եւ Տէրոջը բարկու-
թիւնը Իսրայէլի վրայ բորբոքե-
ցաւ, ու Թզանոնք Փղշտացւոց
ձեռքը՝ ու Ամմոնի որդւոց ձեռքը
8 մատնեց ։ Եւ անոնք ան տարիէն
մինչեւ տասնըութը տարի Իսրայէլի
որդիքը նեղեցին ու հարստահարե-
ցին, այսինքն բոլոր Իսրայէլի որդի-
քը, որոնք Յորդանանու անդիի
կողմը՝ Գաղաադու մէջ՝ Ամորհա-
9 ցւոց երկրին մէջը կը բնակէին ։ Նաեւ
Ամմոնի որդիքը Յորդանանէն ան-
ցան, որ Յուդայի հետ, Բենիամի-
նի հետ, ու Եփրեմի տանը հետ ալ
պատերազմ ընեն. ու Իսրայէլը
խիստ մեծ նեղութեան մէջ էր ։
10 ԺԵւ Իսրայէլի որդիքը Տէրոջը ա-
ղաղակեցին, ու ըսին. Քեզի դէմ
մեղք գործեցինք. քանզի մեր Աս-
տուածը թողուցինք, ու Բահաղի-
11 մը պաշտեցինք ։ Եւ Տէրը Իսրա-
յէլի որդւոցը ըսաւ. Չէ՞ որ ԺԱԵգ-
իպտացիներէն, ԺԲԱմոր-
հացիներէն, ԺԳԱմմոնի որդւոցմէն,
12 ու ԺԴՓղշտացիներէն. Նաեւ երբոր
Սիդոնացիները, ԺԵԱմաղէկացիները,
ու Մաոնացիները ԺԶձեզ նեղեցին,
ու դուք ինծի աղաղակեցիք, ես
ձեզ անոնց ձեռքէն ազատեցի ։
13 ԺԷԲայց դուք զիս թողուցիք, ու
ուրիշ աստուածներու ծառայու-

Ն. Ք. ԳՔ.
Իսր 1206

ՙ Գլ. Բ. 16 ։
Իսր 1183
Բ Գլ. Ե. 10 ։ ԺԲ. 14 ։
Գ Բ Օր. Գ. 14 ։
Դ Թուոց. ԼԲ. 41 ։
Իսր 1161
Ե Գլ. Բ. 11 ։ Գ. 7 ։ Դ. 1 ։ Զ. 1 ։ ԺԳ. 1 ։
Զ Գլ. Բ. 13 ։
Է Գլ. Բ. 12 ։
Ը Գ Թագ. ԺԱ. 33 ։ Սաղ. ԾԶ. 36 ։
Թ Գլ. Բ. 14 ։ Ա Թագ. ԺԲ. 9 ։
Ժ Ա Թագ. ԺԲ. 10 ։
ԺԱ Ել. ԺԴ. 30 ։
ԺԲ Թուոց. ԻԱ. 21, 24, 25 ։
ԺԳ Գլ. Գ. 12, 13 ։
ԺԴ Գլ. Գ. 31 ։
ԺԵ Գլ. Զ. 3 ։
ԺԶ Սաղ. ԾԶ. 42, 43 ։
ԺԷ Բ Օր. ԼԲ. 15 ։ Երեմ. Բ. 13 ։

Ն · ք · գՔ · Իբր 1161

ղ բ Օր · լբ · 37, 38 ։ դ Թագ · գ · 13 ։ Երեմ · բ · 28 ։
ճ ա Թագ · գ · 18 ։ բ Թագ · ժե · 26 ։
մ բ Մն · է · 14 ։ ժե · 8 ։ Երեմ · ժը · 7, 8 ։
յ Սաղ · ճզ · 44, 45 ։ Ես · կգ · 9 ։
ն Գլ · ժա · 11, 29 ։ Ծն · լա · 49 ։
շ Գլ · ժա · 8, 11 ։

թիւն ըրիք . անոր համար ես մէյ-
մըն ալ ձեզ պիտի չազատեմ ։
14 Գացէք ղձեր ընտրած աստուած-
ներուն աղաղակեցէք . ձեր նեղու-
թեան ատենը՝ թող անոնք ձեզ ա-
15 զատեն ։ Եւ Իսրայէլի որդիքը Տէ-
րոջը ըսին . Մեղք գործեցինք . ճքու
աչքիդ առջեւը ինչ որ հաճելի է, ան
ըրէ՝ մեզի . բայց միայն կ'աղաչենք,
16 ազատէ՝ մեզ այսօր ։ մՈւստի իրենց
մէջէն օտար աստուածները վերցու-
ցին, ու Տէրոջը ծառայութիւն
ըրին . և յԱնոր սիրտը իջաւ Իսրա-
յէլի նեղութեանը համար ։
17 Եւ Ամմոնի որդիքը ժողվուե-
ցան, ու Գաղաադու մէջ բանա-
կեցան . Իսրայէլի որդիքն ալ ժող-
վուեցան, ու նՄասփայի մէջ բա-
18 նակեցան ։ Եւ ժողովուրդը ու
Գաղաադու իշխանները իրարու ը-
սին . Ո՛վ որ Ամմոնի որդւոցը հետ
պատերազմ ընելու սկսէ, անիկայ
շԳաղաադու բոլոր բնակչացը
գլուխ ըլլայ ։

## ԳԼ · ԺԱ

1 Յեփթայէին ու Գաղաադու բնակչացը մէջտե-
ղը եղած դաշնակցութիւնը՝ որ ինքը անոնց
գլուխ ըլլայ ։ 12 Յեփթայէին՝ Ամմոնացւոց
առաջարկած խաղաղութեան խօսքերը անօ-
գուտ կ'ըլլան ։ 29 Յեփթայէ ուխտ կ'ընէ . 32
Ամմոնացիները կը յաղթէ, 34 ու ըրած ուխտը
իր աղջկանը վրայ կը կատարէ ։

ա Եբր · ժա · 32 ։
բ Գլ · զ · 12 ։ դ Թագ · ե · 1 ։
գ Գլ · Թ · 4 ։ ա Թագ · իբ · 2 ։
դ Ծն · իզ · 27 ։

1 Եւ աԳաղաադացի Յեփթայէն
բզօրաւոր ու կտրիճ մարդ մըն
էր ու անիկայ պոռնիկ կնկան մը
զաւակ էր . ու Յեփթայէին հայրը
2 Գաղաադ էր ։ Եւ Գաղաադին
կնիկը անոր զաւակներ ծնաւ . ու
երբոր կնկանը զաւակները մեծցան,
Յեփթայէն վռնտեցին, ու անոր
ըսին . Դուն մեր հօրը տանը մէջ
ժառանգութիւն պիտի չունենաս .
քանզի դուն օտար կնկան մը զա-
3 ւակ ես ։ Ու Յեփթայէ իր եղբայր-
ցը երեսէն փախչելով՝ Տովբի երկ-
րին մէջ բնակեցաւ և Յեփթա-
յէին քովը գսրիկայ մարդիկներ
ժողվուեցան, ու անոր հետ կը
պտըտէին ։
4 Եւ եղաւ որ՝ ատենէ մը ետքը
Ամմոնի որդիքը Իսրայէլի հետ պա-
5 տերազմ ըրին ։ Ու երբոր Ամմոնի
որդիքը Իսրայէլի հետ պատերազմ
կ'ընէին, Գաղաադու ծերերը գա-
ցին որ Յեփթայէն Տովբի երկրէն
6 առնեն ։ Եւ Յեփթայէին ըսին .
Եկո՛ւր՝ մեզի զօրագլուխ եղիր, որ
Ամմոնի որդւոցը հետ պատերազմ
7 ընենք ։ Ու Յեփթայէն Գաղաա-
դու ծերերուն ըսաւ . դԱհա դուք
զիս ատեցիք, և իմ հօրս տունէն
զիս վռնտեցիք, ու հիմա որ նե-
ղութեան մէջ էք, ինչո՞ւ համար

8 ինծի եկաք ։ եԵւ Գաղաադու ծե-
րերը Յեփթայէին ըսին . Անոր հա-
մար զքեզի դիմեցինք, որ մեզի
հետ երթաս, ու Ամմոնի որդւոցը
դէմ պատերազմ ընես, և էմեզի՝
Գաղաադու բոլոր բնակչացը գլուխ
9 ըլլաս ։ Ու Յեփթայէ Գաղաադու
ծերերուն ըսաւ . Թէ որ դուք զիս
դարձընէք Ամմոնի որդւոցը դէմ
պատերազմ ընելու համար, ու Տէ-
րը զանոնք իմ ձեռքս մատնէ, ես
10 ձեզի գլուխ ըլլա՞մ ։ Եւ Գաղաա-
դու ծերերը Յեփթայէին ըսին .
ըՏէրը մեր մէջը վկայ ըլլայ, *որ
11 ըսածիդ պէս պիտի ընենք" ։ Ու
Յեփթայէ Գաղաադու ծերերուն
հետ գնաց . և ժողովուրդը զանի-
կայ իրենց վրայ թգլուխ ու զօրա-
պետ դրին . ու Յեփթայէ ժՄաս-
փայի մէջ Տէրոջը առջեւը իր բոլոր
խօսքերը զրուցեց ։
12 Եւ Յեփթայէ՝ Ամմոնի որդւո-
ցը թագաւորին պատգամաւորներ
խրկեց, ըսելով . Դուն ինծի հետ
ի՞նչ բան ունիս, որ ինծի եկար՝
իմ երկրիս մէջը պատերազմ ընելու
13 համար ։ Եւ Ամմոնի որդւոց թա-
գաւորը՝ Յեփթայէին պատգամա-
ւորներուն ըսաւ . իՈրովհետև Իս-
րայէլը Եգիպտոսէն ելած ատենը՝
Առնոնէն մինչև լՅաբոկը ու
մինչև Յորդանանը իմ երկիրս ա-
ռաւ . հիմա զանիկայ խաղաղու-
14 թեամբ ետ դարձուր ։ Ու Յեփ-
թայէ Ամմոնի որդւոցը թագաւո-
րին նորէն պատգամաւորներ խրկեց,
15 Եւ անոր ըսաւ . Յեփթայէն այս-
պէս կ'ըսէ . խԻսրայէլը՝ Մովաբի
երկիրը ու Ամմոնի որդւոց երկիրը
16 չառաւ . Քանզի Եգիպտոսէն ելած
ատենը Իսրայէլը մինչև ծԿարմիր
ծովը անապատէն գնաց, ու կԿա-
17 դէսը եկաւ . Եւ հԻսրայէլ՝ Եդովմի
թագաւորին դեսպաններ խրկեց՝
ըսելով . Շնորհք ըրէ, քու երկ-
րէդ անցնիմ . ձբայց Եդովմի թա-
գաւորը մտիկ չըրաւ . անանկ ալ
Մովաբի թագաւորին խրկեց . ան
ալ թող չտուաւ . ու Իսրայէլը
18 ղԿադէսի մէջ մնաց ։ Եւ անապա-
տին մէջէն գնաց, ու ճԵդովմի
երկրին ու Մովաբի երկրին բոլոր-
տիքը պտըտեցաւ, և մՄովաբի
երկրին արեւելեան կողմն երթա-
լով՝ յԱռնոնին անդիի կողմը բա-
նակեցաւ . բայց Մովաբի սահմա-
նին մէջը չմտաւ, քանզի Մովաբի
19 սահմանը Առնոնն էր ։ Ու նԻս-
րայէլ դեսպաններ խրկեց Ամորհա-
ցւոց Սեհոն թագաւորին՝ (որ Եսե-
բոնի թագաւորն էր,) և Իսրայէլ
անոր ըսաւ . շՇնորհք ըրէ, քու
երկրէդ անցնիմ, որ իմ տեղս եր-

Ն · ք · գՔ · Իբր 1161

ե Գլ · ժ · 18 ։
զ Ղու · ժէ · 4 ։
է Գլ · ժ · 18 ։
ը Երեմ · խբ · 5 ։
* Եբր · Թէ որ անանկ քու ըսածիդ պէս չընենք ։
թ Հմր 8 ։
ժ Գլ · ժ · 17 ։ ի · 1 ։ ա Թագ · ժ · 17 ։ ժա · 15 ։
Իբր 1143
ի Թւ · իա · 24, 25, 26 ։
լ Ծն · լբ · 22 ։
խ բ Օր · բ · 9, 19 ։
ծ Թւ · ժգ · 25 ։ բ Օր · ա · 40 ։ Յես · ե 6 ։
կ Թւ · ժգ · 27 ։ ի · 1 ։ բ Օր · ա · 46 ։
հ Թւ · ի · 14 ։
ձ Թւ · ի · 18, 21 ։
ղ Թւ · ի · 1 ։
ճ Թւ · իա · 4 ։ բ Օր · բ · 1—8 ։
մ Թւ · իա · 11 ։
յ Թւ · իա · 13 ։ իբ · 36 ։
ն Թւ · իա · 21 ։ բ Օր · բ · 26 ։
շ Թւ · իա · 22 ։ բ Օր · բ · 27 ։

Ն · Ք · ԳՔ · ԻՐՐ 1143

ա Թու · իա · 23 ; բ Օր · բ · 32 ;
* Եբր · չվստահացաւ
չ Թու · իա · 24 · 25 ; բ Օր · բ · 33 · 34 ;
դ բ Օր · բ · 36 ;
ը Թու · իա · 29 ; գ Թագ · ժա · 7 ; Երեմ · խը · 7 ;
ա բ Օր · Թ · 4 · 5 ; ժը · 12 ; Յես · գ · 10 ;
ս Թու · իբ · 2 ; Տես Յես · իդ · 9 ;
† Եբր · աղէ՞կ
ւ Թու · իա · 25 ;
տ բ Օր · բ · 36 ;
ր Ծն · ժը · 25 ;
ց Ծն · ժզ · 5 ; լա · 53 ; ա Թագ · իդ · 12 , 15 ;
ւ Գլ · գ · 10 ;
ք Ծն · իը · 20 ; ա Թագ · ա · 11 ;
ֆ Տես Ղև · իէ · 2 , 3 , 28 ; ա Թագ · ա · 11 , 28 ; բ · 18 ;
օ Սաղ · կզ · 13 ; Տես Ղև · իէ · 11 · 12 ;

20 թամ ։ ոԲայց Սեհոն Իսրայէլին
*հրաման չտուաւ" որ իր սահմա֊
նէն անցնի . ու Սեհոն իր բոլոր
ժողովուրդը ժողվեց , և Յաասայի
մէջ բանակեցան . ու անիկայ Իս֊
21 րայէլի դէմ պատերազմ ըրաւ ։ Եւ
Իսրայէլի Տէր Աստուածը՝ Սեհոնը
ու անոր բոլոր ժողովուրդը Իսրա֊
յէլին ձեռքը մատնեց . ու չզա֊
նոնք զարկին . և Իսրայէլ ան երկ֊
րին մէջը բնակող Ամօրհացւոց բո֊
22 լոր երկիրը առաւ ։ Ու Իսրայէլ
դԱմօրհացւոց բոլոր սահմանը՝ Առ֊
նոնէն մինչև Յաբոկը , ու անապա֊
տէն մինչև Յորդանանը ժառան֊
23 գեց ։ Ուստի հիմա որ Իսրայէլի
Տէր Աստուածը՝ Ամօրհացիները իր
Իսրայէլ ժողովուրդին առջևէն վը֊
ռընտեր է , դո՞ւն պիտի ժառանգես
24 ան երկիրը ։ Չքու աստուածդ
Քամովսին քեզի ժառանգութիւն
տուածը դուն չե՞ս ժառանգեր .
մենք ալ՝ ամեր Եհովայ Աստուծոյն
մեր առջևէն վռընտած ազգերուն
25 երկիրը կը ժառանգենք ։ Եւ հի֊
մա դուն՝ Մովաբի թագաւորէն՝
սՍեպփորեան Բաղակէն աւելի †զօ֊
րաւո՞ր ես . միթէ անիկայ բնաւ
Իսրայէլի հետ ծեծկուեցա՞ւ , կամ
անոնց հետ պատերազմ ըրա՞ւ ։
26 Իսրայէլը՝ ւԵսեբոնի ու անոր գե֊
ղերուն մէջը , տԱրոերի ու անոր
գեղերուն մէջը , և Առնոնի եզեր֊
քին վրայ եղող բոլոր քաղաքնե֊
րուն մէջը՝ իրեք հարիւր տարի
է որ կը բնակի . և ինչո՞ւ համար
զանոնք այնքան ատենի մէջ չա֊
27 զատեցիք ։ Ուստի ես քեզի դէմ
յանցանք մը չեմ ըրած , և դուն
ինծի հետ պատերազմ ընելով՝ ինծի
չարութիւն կ'ընես . այսօր Իսրա֊
յէլի որդւոց ու Ամմոնի որդւոց մէ֊
ջը րԴատաւոր եղող Տէրը ցթող
28 դատաստան ընէ ։ Բայց Ամմոնի
որդւոց թագաւորը՝ Յեփթայէին
խրկած խօսքերը մտիկ չըրաւ ։
29 Ան ատենը Յեփթայէին վրայ
ւՏէրոջը Հոգին եկաւ , ու անիկայ
Գաղաադէն ու Մանասէէն անցաւ ,
և Գաղաադու Մասփայէն ալ ան֊
ցաւ , ու Գաղաադու Մասփայէն՝
30 Ամմոնի որդւոցը վրայ գնաց ։ Եւ
Յեփթայէ քՏէրոջը ուխտ ըրաւ՝ ու
ըսաւ . Թէ որ Ամմոնի որդիքը
31 բոլորովին իմ ձեռքս մատնես , Ու
Ամմոնի որդւոցմէ խաղաղութեամբ
ետ դառնամ , ան ատենը իմ տանս
դռնէն զիս դիմաւորելու ելլողը
ֆՏէրո՛ջը թող ըլլայ ; օու զանիկայ
32 ողջակէզ մատուցանեմ ։ Եւ Յեփ֊
թայէ Ամմոնի որդւոցը վրայ գնաց ,
որ անոնց հետ պատերազմ ընէ . ու
Տէրը անոր ձեռքը մատնեց զանոնք ։

33 Եւ Արոերէն մինչև ֆՄեննիթ՝ քսան
քաղաք , ու մինչև Աբէլքերամիմ
սաստիկ կոտորածով ջարդեց զա֊
նոնք . ու Ամմոնի որդիքը՝ Իսրա֊
յէլի որդւոց առջևը նուաճեցան ։
34 Եւ Յեփթայէ աՄասփա իր տու֊
նը եկաւ . ու ահա բանոր աղջիկը
թմբուկներով և պար բռնելով զա֊
նիկայ դիմաւորելու կ'ելլէր . և ա֊
նիկայ անոր մէկ հատիկ զաւակն
էր , ու անկէ 'ի զատ տղայ կամ
35 աղջիկ չունէր ։ Եւ Յեփթայէ երբոր
զանիկայ տեսաւ , գիր լաթերը
պատռեց , ու ըսաւ . Ո՜հ՝ աղջիկս ,
դուն զիս բոլորովին նկուն ըրիր ; և
դուն ինծի իմ նեղիչներուս մէկը
եղար . քանզի ես դբերանս բացի
Տէրոջը , ու եչեմ կրնար ետ դար֊
36 ձընել ։ Եւ աղջիկը անոր ըսաւ .
Ով հայր իմ , Թէ որ Տէրոջը բե֊
րանդ բացիր , զբերնէդ ելածը ըրէ
ինծի . քանզի էՏէրը քու թշնա֊
միներէդ Ամմոնի որդւոցմէն՝ քեզի
համար վրէժխնդրութիւն ըրաւ ։
37 Եւ իր հօրը ըսաւ . Միայն աս բանը
ըրէ ինծի . զիս երկու ամիս թող
տուր , որ լեռներուն վրայ ելլեմ
ու իջնեմ . ու ես՝ իմ ընկերներովս՝
38 իմ կուսութեանս վրայ լամ ։ Եւ
անիկայ ըսաւ . Գնա . ու զանիկայ
երկու ամիս թող տուաւ . և անի֊
կայ իր ընկերներովը գնաց , ու լեռ֊
ներուն վրայ իր կուսութիւնը լա֊
39 ցաւ ։ Եւ երկու ամիսը լմըննալէն
ետքը՝ իր հօրը դարձաւ . ու անիկայ
ըիր ըրած ուխտը՝ անով կատարեց .
և անիկայ էրիկ մարդ չճանչցաւ ։
Ու Իսրայէլի մէջ սովորութիւն ե֊
40 ղաւ . Որ ատեն ատեն Իսրայէլի
աղջիկները երթան , ու Գաղաա֊
դացի Յեփթայէին աղջկանը համար՝
տարին չորս օր լան ։

## ԳԼ · ԺԲ

1 Եփրեմեանք Յեփթայէին հետ վէճ կ'ընեն ; ու Գաղաադացիք անոնց Շիպպօլէթ ըսել տալով՝ կը մեռցընեն զանոնք ։ 7 Յեփթայէի մահը ։ 8 Աբեսսանը՝ որ երսուն տղայ ու երսուն աղջիկ ունէր , 11 ու Ելօնը . 13 և Աբդօնը՝ որ քառսուն տղայ ու երսուն թոռ ունէր . Իսրայէլը դատեցին ։

1 Ու աԵփրեմի մարդիկները ժող֊
վուեցան , և դէպ 'ի հիւսիսային
կողմը անցան , ու Յեփթայէին ը֊
սին . Ինչո՞ւ համար՝ Ամմոնի որ֊
դւոցը հետ պատերազմելու գացած
ատենդ մեզ չկանչեցիր ; որ քու
հետդ երթայինք . հիմա քու տունդ
քու վրադ կրակով պի֊
2 տի այրենք ։ Եւ Յեփթայէ անոնց
ըսաւ . Ես ու իմ ժողովուրդս՝ Ամ֊
մոնի որդւոցը հետ մեծ կռիւներ
ունեցանք , և ձեզ կանչեցի . բայց
դուք զիս անոնց ձեռքէն չազա֊

Ն · Ք · ԳՔ · ԻՐՐ 1143

ֆ Եզեկ · իէ · 17 ;
ա Գլ · Ժ · 17 ; Հմր 11 ;
բ Ել · ժե · 20 ; ա Թագ · ժը · 6 ; Սաղ · կը · 25 ; Երեմ · լա · 4 ;
գ Ծն · լէ · 29 , 34 ;
դ Ժող · ե · 2 ;
ե Թու · լ · 2 ; Սաղ · ժե · 4 ; Ժող · ե · 4 , 5 ;
զ Թու · լ · 2 ;
է բ Թագ · ժը · 19 , 31 ;
ը Հմր 31 ; ա Թագ · ա · 22 , 24 ; բ · 18 ;
ա Տես Գլ · ը · 1 ;

Ն. Ք. ԶՔ.
Իբր 1143

Բ ա Թագ. ԺԹ. 5 ։ Իբ. 21 ։ Յոբ. ԺԳ. 14 ։ Սաղ. ՃԺԹ. 109 ։

3 տեցիք ։ Ես ալ՝ երբոր տեսայ որ
դուք զիս չէք ազատեր, Բհոգիս
ձեռքիս մէջը դնելով՝ Ամմոնի որ-
դւոցը վրայ գացի, ու Տէրը զանոնք
իմ ձեռքս մատնեց. և ինչո՞ւ համար
դուք այսօր ինծի դէմ պատերազմ
4 ընելու եկաք ։ Ու Յեփթայէ Գա-
ղաադու բոլոր մարդիկները ժողվե-
լով՝ Եփրեմի հետ պատերազմ ը-
րաւ. և Գաղաադու մարդիկը Եփ-
րեմեանները զարկին. քանզի ըսեր
էին թէ՝ Դուք Գաղաադացիք՝
Եփրեմին մէջը ու Մանասէին մէջը՝

Գ Տես ա Թագ. ԻԵ. 10 ։ Սաղ. ՀԸ. 9 ։
Դ Յես. ԻԲ. 11 ։ Գէ. Գ. 28 ։ Է. 24 ։

5 Գ Եփրեմի փախստականներն էք ։ Եւ
Գաղաադացիք Եփրեմին առջևէն
Դ Յորդանանու անցքերը բռնեցին.
ու երբոր Եփրեմի փախստական մը՝
Թող տուէք անցնիմ՝ ըսէր, Գա-
ղաադու մարդիկները անոր կ'ըսէ-
ին. Եփրեմեա՞ն ես. ու անիկայ՝

* Ցո՛ հասկ ։

6 Ոչ կ'ըսէր. Եւ անոնք անոր կ'ը-
սէին. Ուրեմն *Շիպպօլէթ ըսէ.
ու անիկայ Սիպպօլէթ կ'ըսէր.
(քանզի չէր կրնար շիտակ արտա-
բերել.) ուստի զանիկայ կը բռ-
նէին, և Յորդանանու անցքերուն
մէջը կը սպաննէին. ու ան ատենը
Եփրեմէն քառասուներկու հազար
մարդ ինկաւ ։

Իբր 1137

7 Եւ Յեփթայէ Իսրայէլի մէջ վեց
տարի դատաւորութիւն ըրաւ. ու
Գաղաադացի Յեփթայէն մեռաւ,
և Գաղաադու քաղաքներուն մէկուն
մէջը թաղուեցաւ ։
8 Ու անկէ ետև Իսրայէլի մէջ
Բեթլէհէմացի Աբեսսանը դատա-
9 ւորութիւն ըրաւ ։ Եւ անիկայ
երսուն տղայ ունէր, ու երսուն աղ-
ջիկ՝ որոնք դուրս տուաւ, ու դուր-
սէն ալ իր տղոցը՝ երսուն աղջիկ
ներս առաւ. ու ինքը Իսրայէլի մէջ
եօթը տարի դատաւորութիւն ը-
10 րաւ ։ Եւ Աբեսսանը մեռաւ, ու
Բեթլէհէմի մէջ թաղուեցաւ ։

Իբր 1130

11 Եւ անկէ ետև Զաբուղոնացի
Ելօնը Իսրայէլի դատաւոր եղաւ,
ու Իսրայէլի մէջ տասը տարի դա-
12 տաւորութիւն ըրաւ ։ Եւ Զա-
բուղոնացի Ելօնը մեռաւ, ու Զա-
բուղոնի երկիրը՝ Այեղոնի մէջ
թաղուեցաւ ։

Իբր 1120

13 Եւ անկէ ետև Փարաթոնացի
Հելլէլին որդին Աբդօնը Իսրայէլի
14 դատաւոր եղաւ ։ Ու անիկայ քառ-
սուն տղայ ու երսուն թոռ ունէր,
որոնք Եեօթանասուն աւանակնե-
րու վրայ կը հեծնէին. և ինքը Իս-
րայէլի մէջ ութը տարի դատաւո-
15 րութիւն ըրաւ ։ Ու Փարաթոնացի
Հելլէլին որդին Աբդօնը մեռաւ, և
Զ Ամաղեկացւոց լեռանը վրայ՝ Եփ-
րեմի երկիրը Փարաթոնի մէջ թա-
ղուեցաւ ։

Ե Գէ. Ե. 10 ։ Ժ. 4 ։

Իբր 1112

Զ Գէ. Գ. 13. 27 ։ Ե. 14 ։

ԳԼ. ԺԳ

1 Իսրայէլը Փղշտացւոց ձեռքը կը մատնուի. 2 Հրեշտակ մը Մանուէին կնկանը կ'երևնայ. 8 Մանուէին ալ կ'երևնայ. 15 Մանուէ զոհ մատուցանելով՝ կը հասկընայ թէ անիկայ հրեշտակ է ։ 24 Սամփսոնին ծնունդը ։

Ն. Ք. ԶՔ.
Իբր 1161

Ա Գէ. Բ. 11 ։ Գ. 7. Դ. 1 ։ Զ. 1. Ժ. 6 ։
Բ ա Թագ. ԺԲ. 9 ։

1 Եւ Իսրայէլի որդիքը Անորէն Տէ-
րոջը առջևը չարութիւն ըրին.
ու Տէրը զանոնք Բքառասուն տարի
Փղշտացւոց ձեռքը մատնեց ։
2 Եւ Դանի ցեղէն՝ Մանուէ անու-
նով Գ Սարաացի մարդ մը կար, ու
անոր կնիկը ամուլ էր. և զաւակ
3 չէր ծնաներ ։ Ու Դ Տէրոջը հրեշ-
տակը այն կնկանը երևցաւ, և անոր
ըսաւ. Ահա դուն հիմա ամուլ ես,
ու չես ծնանիր. բայց պիտի յղա-
4 նաս, ու որդի մը ծնանիս ։ Ուս-
տի հիմա զգո՛յշ կեցիր, Եչըլլայ
որ գինի կամ օղի խմես, ո՛չ ալ
5 անմաքուր բան մը ուտես. Քանզի
ահա դուն պիտի յղանաս, և որդի
մը ծնանիս, ու Զանոր գլխուն վրայ
ածելի պիտի չելլէ. քանզի ան տը-
ղան՝ իր մօրը արգանդէն՝ Ե Աստու-
ծոյ ուխտաւորը պիտի ըլլայ. և ա-
նիկայ Է Իսրայէլը Փղշտացւոց ձեռ-
6 քէն ազատելու պիտի սկսի ։ Ու
կնիկը գնաց, և իր էրկանը պատմեց
ըսելով. Ը Աստուծոյ մարդ մը ինծի
եկաւ, ու անոր Թ դէմքը՝ Աստու-
ծոյ հրեշտակի դէմքին պէս խիստ
ահարկու էր. և Ժանոր ուսկից ըլ-
լալը չհարցուցի, ո՛չ ալ անիկայ իր
7 անունը ինծի զրուցեց. Ու ինծի
ըսաւ. Ահա դուն պիտի յղանաս,
ու որդի մը ծնանիս. և հիմա գինի
ու օղի չխմե՛ս, ու անմաքուր բան
մը չուտե՛ս. քանզի ան տղան՝ իր
մօրը արգանդէն մինչև իր մահուան
օրը՝ Աստուծոյ ուխտաւորը պիտի
ըլլայ ։
8 Եւ Մանուէ Տէրոջը աղաչելով՝
ըսաւ. Կ'աղաչեմ՝ ո՛վ Տէր, ան
Աստուծոյ մարդը՝ որ դուն ղրկե-
ցիր. նորէն մեզի գայ, ու մեզի սոր-
վեցընէ թէ ան ծնանելու տղուն
9 ինչ ընենք ։ Եւ Աստուած Մա-
նուէին ձայնը լսեց. ու Աստուծոյ
հրեշտակը նորէն կնկանը եկաւ.
երբոր անիկայ արտին մէջը նստեր
էր. ու անոր էրիկը Մանուէ անոր
10 հետը չէր ։ Եւ կնիկը շուտով վա-
զեց, ու իր էրկանը պատմեց, և ա-
նոր ըսաւ. Ահա ան օրը ինծի եկող
11 մարդը նորէն ինծի երևցաւ ։ Ու
Մանուէ ելաւ՝ իր կնկանը ետևէն
գնաց, և ան մարդուն քովը մօտե-
ցաւ, ու անոր ըսաւ. Կնկանը հետ
խօսող մարդը դո՞ւն ես. ու անի-
12 կայ ըսաւ. Ես եմ ։ Եւ Մանուէ
ըսաւ. Երբոր քու ըսածդ ըլլայ.
տղուն պէտք եղածը ի՞նչ է. ու

Գ Յես. ԺԹ. 41 ։
Դ Գէ. Զ. 12 ։ Ղու. Ա. 11. 13. 28. 31 ։
Ե Հմր 14 ։ Թու. Զ. 2. 3 ։ Ղու. Ա. 15 ։
Զ Թու. Զ. 5 ։ ա Թագ. Ա. 11 ։
Ե Թու. Զ. 2 ։
Է Տես ա Թագ. Է. 13 ։ բ Թագ. Ը. 1 ։ ա Մն. ԺԸ. 1 ։
Ը բ Օր. ԼԳ. 1 ։ ա Թագ. Բ. 27 ։ Թ. 6 ։ գ Թագ. ԺԷ. 24 ։
Թ Մատ. ԻԸ. 3 ։ Ղու. Թ. 29 ։ Գոր. Զ. 15 ։
Ժ Հմր 17. 18 ։

Ն․ Ք․ ԳՔ․
Իբր 1161

13 *ի՞նչ ընելու է" ։ Եւ Տէրոջը հրեշ-
տակը Մանուէին ըսաւ․ Կնիկը՝ ա-
14 մէն ըսածէս թող զգուշանայ․ Որ-
թէն ելած բան մը բնաւ չուտէ՝, և
ւգինի ու օղի չխմէ՝, և անմաքուր
բան մը բնաւ չուտէ՝, — իմ ամէն
պատուիրածս պահէ ։
15 Եւ Մանուէ՝ Տէրոջը հրեշտակին
ըսաւ․ Կ'աղաչեմ․ ՝Քիչ մը մեր
քովը նստէ՝, ու այծերէն ուլ մը
պատրաստենք ‒‒ քու առջևդ դը-
16 նենք ։ Եւ Տէրոջը հրեշտակը Մա-
նուէին ըսաւ․ Ես քու քովդ նըս-
տիմ ալ, քու հացէդ պիտի չու-
տեմ․ բայց թէ որ ողջակէզ պիտի
ընես, զանիկայ Տէրոջը ընծայէ՝․
քանզի Մանուէ չգիտցաւ թէ անի-
17 կայ Տէրոջը հրեշտակն է ։ Եւ Մա-
նուէ՝ Տէրոջը հրեշտակին ըսաւ․
Անունդ ի՞նչ է․ որպէս զի՝ երբ-
որ խօսքդ կատարուի, քեզ պա-
18 տուենք ։ Ու Տէրոջը հրեշտակը ա-
նոր ըսաւ․ Իմ անունս ինչո՞ւ ա-
սանկ կը հարցընես․ որովհետև ա-
19 նիկայ ՚սքանչելի է ։ Եւ Մանուէ
ուլը ու հացի ընծան առաւ, ՚և
մէկ քարի մը վրայ Տէրոջը ընծա-
յեց․ ու հրեշտակը՝ Մանուէին և
անոր կնկանը աչքերուն առջևը
20 հրաշք մը ըրաւ․ Քանզի երբոր բոցը
սեղանէն դէպ 'ի երկինքը վեր կ'ել-
լէր, Տէրոջը հրեշտակն ալ սեղա-
նին բոցովը վեր ելաւ․ և Մանուէ
ու իր կնիկը կը նայէին, ու Յերեսի
21 վրայ գետինը ինկան ։ Եւ Տէրոջը
հրեշտակը մէյմըն ալ Մանուէին ու
անոր կնկանը չերևցաւ․ Ւան ա-
տենը Մանուէ հասկըցաւ որ անի-
22 կայ Տէրոջը հրեշտակն է ։ Ու Մա-
նուէ իր կնկանը ըսաւ․ ՚Անշուշտ
պիտի մեռնինք, քանզի զԱստուած
23 տեսանք ։ Եւ կնիկը անոր ըսաւ․
Թէ որ Տէրը մեզ մեռցընել ու-
զէր, մեր ձեռքէն՝ ողջակէզը ու
հացի ընծան չէր ընդունէր, ու աս
բոլոր բաները մեզի չէր ցուցըներ․
և աս միջոցիս մէջը ասանկ խօսքեր
մեզի լսել չէր տար ։
24 Ու կնիկը որդի մը ծնաւ, և անոր
անունը ՚Սամփսոն կոչեց․ ու
Յտղան մեծցաւ, և Տէրը զանիկայ
25 օրհնեց ։ Ու ՚Տէրոջը Հոգին՝ ՚Սա-
րայի ու Եսթաւուղի մէջ՝ †Դանի
բանակին" մէջը՝ սկսաւ անոր վրայ
գալ ։

* Կամ՝ ի՞նչ ընենք անոր ։
ւ Հմր 4 ։
ի Ծն․ ժը․ 5 ։ Գլ․ Զ․ 18 ։
ծ Ծն․ լբ․ 29 ։
կ Ես․ Թ․ 6 ։
հ Գլ․ Զ․ 19, 20 ։
յ Ղև․ Թ․ 24 ։ ա Մն․ իա․ 16 ։ Եզեկ․ ա․ 28 ։ Մատ․ ժէ․ 6 ։
ւ Գլ․ Զ․ 22 ։
ճ Ծն․ լբ․ 30 ։ Ել․ լԳ․ 20 ։ բ Օր․ ե․ 26 ։ Գլ․ Զ․ 22 ։
մ Եբր․ ժա․ 32 ։
յ ա Թագ․ Գ․ 19 ։ Ղու․ ա․ 80 ։ բ․ 52 ։
ն Գլ․ Գ․ 10 ։ ա Թագ․ ժա․ 6 ։ Մատ․ Դ․ 1 ։
ւ Յես․ ժե․ 33 ։ Գլ․ ժը․ 11 ։
† Կամ՝ Մաանէ Դանին․ Գլ․ ժը․ 12 ։

ԳԼ․ ԺԴ

1 Սամփսոն Փղշտացիներէն կնիկ մը կ'ուզէ ։ 6 Իր ճամբորդութեանը մէջ առիւծ մը կը սպաննէ ։ 8 Երկրորդ անգամ նոյն ճամբայէն անցնելով՝ առիւծին դիին մէջ մեղր կը գտնէ ։ 10 Սամփսոնին հարսանիքը ։ 12 Փղշտացիք Սամփսոնին հանելուկը անոր կնկանը միջոցովը կը բացատրեն ։ 19 Սամփսոն՝ երսուն Փղշտացիներ սպաննելով․ անոնց կողոպուտը կ'առնէ ։ 20 Իր կնիկը ուրիշի մը կը տրուի ։

1 Եւ Սամփսոն ՚Թամնաթա իջաւ,
ու Թամնաթայի մէջ Փղշտա-
ցւոց աղջիկներէն ՚կնիկ մը տեսաւ․
2 Եւ ետքէն ելաւ եկաւ, ու իր
հօրը և մօրը պատմեց ու ըսաւ․
Թամնաթայի մէջ Փղշտացւոց աղ-
ջիկներէն կնիկ մը տեսայ․ ու հիմա
3 ՚զանիկայ ինծի կնիկ առէք ։ Եւ
անոր հայրը ու մայրը անոր ըսին․
Միթէ ՚քու եղբարցդ աղջիկներուն
մէջը, ու իմ բոլոր ժողովուրդիս
մէջը կնիկ չկա՞յ՝ որ դուն ՚անթըլ-
փատ Փղշտացիներէն կնիկ առնելու
պիտի երթաս․ Բայց Սամփսոն իր
հօրը ըսաւ․ Զանիկայ ինծի առ․
քանզի իմ աչքերուս անիկա՛յ հա-
4 ճելի է ։ Եւ անոր հայրը ու մայրը
չէին գիտեր որ աս բանը ՚Տէրոջմէն
է․ քանզի անիկայ Փղշտացիներէն
մէկ առիթ մը կը փնտռէր․ ու ան
ատենը ՚Փղշտացիները Իսրայէլի
վրայ կ'իշխէին ։
5 Եւ Սամփսոն իր հօրը ու մօրը
հետ Թամնաթա իջաւ․ ու մինչև
Թամնաթային այգիները եկան․ և
ահա՛ առիւծի կորիւն մը մռնչելով
6 անոր դէմը ելաւ ։ Ու ՚Տէրոջը Հո-
գին անոր վրայ գալով՝ ուլ մը ճեղ-
քելու պէս զանիկայ ճեղքեց, ու
ձեռքին մէջ բան մը չկար․ և ըրած
բանը իր հօրը ու մօրը չպատմեց ։
7 Եւ իջաւ՝ ու կնկանը հետ խօսե-
ցաւ․ և կնիկը Սամփսոնին աչքե-
րուն հաճելի երևցաւ ։
8 Ու ժամանակէ մը ետքը՝ երբոր
դարձաւ կնիկը առնելու, առիւծին
դիին տեսնելու համար՝ իր ճամբայէն
խոտորեցաւ․ և ահա՛ առիւծին դիին
մէջը՝ մեղուներու գունդ ու մեղր
9 կար․ Ու զանիկայ ձեռքը առաւ,
և ուտելով կ'երթար․ ու իր հօրը
ու մօրը գնաց, և անոնց ալ տուաւ,
ու կերան․ բայց անոնց չըսաւ թէ
մեղրը առիւծին դիէն հանեց ։
10 Եւ անոր հայրը՝ այն կնկանը քովը
իջաւ․ ու Սամփսոն հոն խնջոյք մը
ըրաւ․ քանզի երիտասարդները այս-
11 պէս կ'ընէին ։ Ու երբոր զանիկայ
տեսան, երսուն ընկեր բերին, որ
անոր հետը ըլլան ։
12 Եւ Սամփսոն անոնց ըսաւ․ Հի-
մա ձեզի ՚մէկ հանելուկ մը պիտի
ըսեմ․ թէ որ զանիկայ՝ ՚աս խնջոյ-
քիս եօթը օրուանը մէջ ինծի բա-
ցատրէք ու գտնէք, ես ալ ձեզի
երսուն ‡սաւան ու երսուն ձեռք
՚փոխելու հանդերձ կու տամ․
13 Բայց թէ որ չկարենաք զանիկայ ին-
ծի բացատրել, ան ատենը դուք
ինծի երսուն սաւան ու երսուն
ձեռք փոխելու հանդերձ տաք․ և

Ն․ Ք․ ԳՔ․
Իբր 1141

— Ծն․ լը․ 13 ։ Յես․ ժե․ 10 ։
ք Ծն․ լդ․ 2 ։
ց Ծն․ իա․ 21 ։ լդ․ 4 ։
ղ Ծն․ իդ․ 3, 4 ։
ի Ծն․ լդ․ 14 ։ Ել․ լդ․ 16 ։ բ Օր․ է․ 8 ։
ւ Յես․ ժա․ 20 ։ գ Թագ․ ժբ․ 15 ։ դ Թագ․ Զ․ 33 ։ բ Մն․ ժ․ 15 ։ իբ․ 7 ։ իե․ 20 ։
ի Գլ․ ժգ․ 1 ։ բ Օր․ իը․ 48 ։
է Գլ․ Գ․ 10 ։ ժգ․ 25 ։ ա Թագ․ ժա․ 6 ։
ր Գ Թագ․ ժ․ 1 ։ Եզեկ․ ժէ․ 2 ։ Ղու․ ժդ․ 7
ծ Ծն․ իթ․ 27 ։
‡ Կամ՝ շապիկ․
ի Ծն․ իե․ 22 ։ դ Թագ․ ե․ 22 ։

Ն. Ք. Գ. Ք. Իրր 1141

անոր ըսին . Քու հանելուկդ մեզի
14 ըսէ որ լսենք ։ Ու անոնց ըսաւ .
Կերողէն կերակուր ելաւ . ու հզօ-
րէն անուշ ելաւ ։ Եւ անոնք —
հանելուկը՝ իրեք օրուան մէջ չկըր-
15 ցան բացատրել ։ Ու *եօթնե-
րորդ օրը՝ Սամփսոնին կնկանը ը-
սին . ԱՊըրիկդ խաբէ որ հանելուկը
մեզի բացատրէ . Բոր չըլլայ թէ
քեզ ու քու հօրդ տունը կրակով
այրենք . մեզ թալլելու համար
16 կանչեցիք . անանկ չէ՞ ։ Եւ
Սամփսոնին կնիկը անոր քովը լա-
լով՝ ըսաւ . ԳԱնշուշտ դուն
զիս ատեցիր ու զիս չսիրեցիր .
իմ ժողովուրդիս որդւոցը մէկ հա-
նելուկ մը ըսիր , ու ինծի չբացատ-
րեցիր ։ Եւ անիկայ ըսաւ անոր .
Ահա իմ հօրս ու մօրս չյայտնեցի ,
17 ու քեզի՞ պիտի յայտնեմ ։ Եւ
իրենց խնճոյքին եօթը օրուանը
մէջ անոր քովը լացաւ . ու Սամփ-
սոն եօթներորդ օրը անոր բացատ-
րեց . քանզի իրեն նեղութիւն կու
տար . անիկայ ալ իր ժողովուրդին
որդւոցը բացատրեց հանելուկը ։
18 Եւ քաղաքին մարդիկները եօթնե-
րորդ օրը՝ արեւը մտնելէն առաջ ա-
նոր ըսին . Մեղրէն անուշ՝ ու ա-
ռիւծէն զօրաւոր ի՞նչ կայ ։ Եւ
անիկայ ըսաւ անոնց . Թէ որ դուք
իմ երինջովս չհերկէիք . իմ հանե-
19 լուկս չէիք կրնար գտնել . Ու
ԴՏէրոջը Հոգին անոր վրայ եկաւ .
և անիկայ Ասկաղոն իջաւ , ու ա-
նոնցմէ երսուն մարդ մեռցուց , և
անոնց հանդերձները առաւ . ու հա-
նելուկը բացատրողներուն տուաւ ,
և սաստիկ բարկանալով՝ իր հօրը
20 տունը ելաւ ։ Ու Սամփսոնին կնի-
կը՝ անոր Եբարեկամը եղող ընկե-
րին տրուեցաւ ։

Գ Գլ. ԺԶ. 5։ Բ Գլ. ԺԵ. 6։ Գ Գլ. ԺԴ. 15։ Դ Գլ. Գ. 10. ԺԴ. 25։ Ե Գլ. ԺԵ. 2. Յով. Գ. 29։

* Կամ՝ չորրորդ

## ԳԼ. ԺԵ

1 Սամփսոն տեսնելով որ իր կնիկը ուրիշի մը տրուեր է . 3 աղուէսներու պոչերուն ջահեր կապելով՝ Փղշտացւոց հունձքերը կ՚այրէ . 6 Փղշտացիք Սամփսոնին կնիկը ու անոր հայրը կ՚այրեն ։ 7 Սամփսոն չարաչար կը զարնէ զանոնք ։ 9 Յուդայի մարդոցմէ կը կապուի , ու Փղշտացւոց ձեռքը կը մատնուի . 14 Ծնօտի ոսկորով մը հազար Փղշտացի կը մեռցնէ . 18 Աստուած անոր ջուր կը խմցնէ Լեքիի մէջ ։

Իրր 1140

1 Եւ եղաւ որ ժամանակէ մը ետքը՝
ցորենի հնձոց օրերը՝ Սամփսոն
այծերէն ուլ մը առաւ , ու իր կըն-
կանը այցելութեան գնաց , ու ը-
սաւ . Ներքին սենեակին մէջ կըն-
կանս քովը մտնեմ . բայց կնկանը
հայրը զանիկայ չթողուց որ մտնէ ։
2 Եւ անոր հայրը ըսաւ . Իրաւցընէ
կարծեցի որ դուն Զզանիկայ բոլո-
րովին ատեցիր , ու զանիկայ քու
բարեկամիդ *տուի . ահա անոր
պզտիկ քոյրը անկէ գեղեցիկ է .
հիմա անոր տեղը անիկայ քեզի ըլ-
3 լայ ։ Եւ Սամփսոն †անոնց ըսաւ .
Աս անգամ Փղշտացւոցմէ անպարտ
պիտի ըլլամ , թէ որ անոնց չա-
4 րութիւն մը ընեմ ։ Ու Սամփսոն
գնաց իրեք հարիւր աղուէս բռնեց ,
և ջահեր առաւ , ու աղուէսները պոչ
պոչի դարձուց , ու երկու պոչերուն
5 մէջ տեղը ջահ մը դրաւ կապեց . Եւ
ջահերը կրակով բռնկցընելէն ետ-
քը՝ զանոնք Փղշտացւոց հունձքե-
րուն մէջը ձգեց . ու դիզուած և
չկտրուած հունձքերը ու մինչև
անգամ այգիները ու ձիթենիները
6 այրեց ։ Եւ Փղշտացիք ըսին . Աս
բանը ո՞վ ըրաւ ։ Ու ըսին . Թամ-
նացիին փեսան Սամփսոնը . քանզի
անոր կնիկը առաւ , և անոր բարե-
կամին տուաւ ։ ԷՈւ Փղշտացիք ե-
լան , և կնիկը ու անոր հայրը կրա-
7 կով այրեցին ։ Իսկ Սամփսոն ա-
նոնց ըսաւ . Թէև դուք այսպէս ը-
րիք , բայց ես վրէժ պիտի առնեմ
ձեզմէ , ու ետքը պիտի դադարիմ ։
8 Եւ զանոնք՝ սրունքէն մինչև երան-
քը մեծ հարուածով մը զարկաւ .
ու իջաւ՝ Ետեմ ապառաժին խո-
ռոչը բնակեցաւ ։
9 Եւ Փղշտացիք ելան , ու Յուդա-
յի մէջ բանակեցան , ու ԸԼեքիի
10 մէջ տարածուեցան ։ Եւ Յուդա-
յեանք ըսին . Ինչո՞ւ համար մեր
վրայ ելաք ։ Անոնք ալ ըսին .
Սամփսոնը կապելու ելանք , որ մեզի
ըրածին պէս՝ մենք ալ անոր ընենք ։
11 Ու Յուդայէն իրեք հազար մարդ Ե-
տեմ ապառաժին խոռոչը իջան , և
Սամփսոնին ըսին . Չե՞ս գիտեր որ
Փղշտացիք Թմեր վրայ կ՚իշխեն .
ինչո՞ւ համար աս բանը մեզի ըրիր ։
Ու անիկայ անոնց ըսաւ . Անոնք
ինծի ինչպէս որ ըրին , ես ալ անոնց
12 այնպէս ըրի ։ Եւ անոր ըսին .
Մենք իջանք որ քեզ կապենք , ու
Փղշտացւոց ձեռքը տանք ։ Եւ
Սամփսոն անոնց ըսաւ . Ինծի եր-
դում ըրէք , որ դուք զիս պիտի
13 չմեռցընէք ։ Եւ անոնք անոր հետ
խօսեցան ու ըսին . Չէ . բայց հի-
մա քեզ պիտի կապենք , ու անոնց
ձեռքը տանք , և քեզ պիտի չմեռ-
ցընենք . ու զանիկայ երկու նոր
չուանով կապեցին , և ապառաժէն
դուրս հանեցին ։
14 Երբոր անիկայ մինչև Լեքի եկաւ ,
Փղշտացիք աղաղակելով՝ զանիկայ
դիմաւորեցին . և ԺՏէրոջը Հոգին
անոր վրայ գալով՝ անոր թևերուն
վրայ եղող չուանները՝ կրակով
այրած քթանի պէս եղան , ու կա-
15 պերը ձեռքերէն քակուեցան ։ Եւ
մէկ իշու ծնօտ մը գտաւ՝ որ դեռ

Զ Գլ. ԺԴ. 20։

Ն. Ք. Գ. Ք. Իրր 1140

† Կամ՝ անոնց համար

Է Գլ. ԺԴ. 15։ Ը Տես Հմր 19։ Թ Գլ. ԺԴ. 4։ Ժ Գլ. Գ. 10. ԺԴ. 6։

Ն.ք. ԴՔ. իրր 1140

Դ Գլ. Գ. 31։ Գլ. ԻԶ. Տ։ Ցես. ԻԴ. 10։

* Այսինքն՝ ծնօտի բլուր։

Ե Սաղ. Գ. 7։

† Կամ՝ ծնօտին

Ը Ծն. ԽԵ. 27։ Ես. Խ. 29։

‡ Այսինքն՝ կանչողին աղբիւրը. Սաղ. ԼԴ. 6։

Ը Գլ. ԺԳ. 1։

չորցած չէր, ու ձեռքը երկընցուց
զանիկայ առաւ, և անով հազար
16 մարդ մեռցուց ։ Ու Սամփսոն ը-
սաւ. Իշու ծնօտով դէզ դէզ ցուցուցի
զանոնք. իշու ծնօտով հազար մարդ
17 մեռցուցի ։ Ու երբոր իր խօսքը
լմընցուց, ծնօտը ձեռքէն նետեց,
և ան տեղին անունը՝ *Ռամաթ
լեքի կոչեց ։
18 Ու խիստ շատ ծարաւելով՝ Տէրոջը
աղաղակեց՝ ու ըսաւ. Ե Դուն քու
ծառայիդ ձեռքովը աս մեծ փրկու-
թիւնը յաջողեցիր. և հիմա ծա-
րաւո՞վ մեռնիմ, ու անթլփատ-
19 ներուն ձե՞ռքը իյնամ ։ Ու Ա-
տուած †Լեքիին մէջ եղած փոսը
բացաւ, ու անկէ ջուր ելաւ. և
Սամփսոն խմեց, Ըու ոգին իրեն
դարձաւ, և ապրեցաւ. անոր հա-
մար անոր անունը՝ ‡Ենգօրէ ըսուե-
ցաւ, որ Լեքիին մէջն է մինչև աս
օրս ։
20 Ու անիկայ Ը Փղշտացւոց օրերը
Իսրայէլի մէջ քսան տարի դատա-
ւորութիւն ըրաւ ։

## ԳԼ. ԺԶ

1 Սամփսոն Գազայէն կը փախչի, ու քաղաքին դռները կ'առնէ կը տանի ։ 4 Դալիլա Փղշտացիներէն կաշառք առնելով՝ Սամփսոնին կամքը կ'որսայ. 6 իրեք անգամ կը խաբուի. 15 բայց վերջապէս իր խնդիրքը կը կատարուի ։ 21 Փղշտացիք կը բռնեն զանիկայ՝ ու անոր աչքերը կը փորեն ։ 22 Սամփսոնին ուժը նորէն իր վրայ գալով՝ Դագոնի տաճարը Փղշտացւոց վրայ կը կործանէ, ու ինքն ալ կը մեռնի ։

իրր 1120

Ա Ա Թագ. ԻԳ. 26։ Սաղ. ՃԺԸ. 10։ 11։ 12։ Գործ. Թ. 24։

Բ Գլ. ԺԴ. 15։ Տես Առակ. Բ. 16—19։ Ե. 3—11։ Զ. 24։ 25։ 26։ Է. 21։ 22։ 23։

1 Ու Սամփսոն Գազա գնաց, ու
հոն պոռնիկ կնիկ մը տեսաւ,
2 և անոր մտաւ ։ Ա Գազացւոց ը-
սուեցաւ թէ՝ Սամփսոնը հոս եկեր
է ։ Ու Ա պաշարեցին՝ ու բոլոր գի-
շերը անոր դարանակալ եղան քա-
ղաքին դրանը քովը, ու բոլոր գի-
շերը լուռ կեցան՝ և ըսին. Առաւօ-
տուն կանուխ զանիկայ կը մեռցը-
3 նենք ։ Ու Սամփսոն մինչև կէս
գիշեր քնացաւ, և կէս գիշերուն
ելաւ, ու քաղաքին դրանը փեղկե-
րը երկու սեմերովը բռնեց, և զա-
նոնք նիգովը մէկտեղ փրցուց, ու
կռնակը առնելով՝ զանոնք Քեբրո-
նին դիմացի լեռանը գլուխը հա-
նեց ։
4 Ու անկէ ետքը՝ Սորեկ հեղե-
ղատին եզերքը բնակող մէկ կնիկ մը
սիրեց, ու անոր անունը Դալիլա
5 էր ։ Ու Փղշտացւոց նախարար-
ները անոր քովը ելան, ու անոր
ըսին. Բ Զանիկայ խաբէ, ու տես
հասկցիր, թէ անոր մեծ զօրու-
թիւնը ինչէն է, և թէ ինչո՞վ կրը-
նանք անոր յաղթել, որ զանիկայ
կապենք ու նուաստացընենք. և
մենք քեզի ամէն մէկերնիս հազար

Ն.ք. ԴՔ. իրր 1120

‖ Կամ՝ դալար աղեղներով

հարիւր կտոր արծաթ կու տանք ։
6 Ու Դալիլա Սամփսոնին ըսաւ.
Կ'աղաչեմ, յայտնէ ինծի, թէ քու
մեծ զօրութիւնդ ինչէն է, և քեզ
նուաստացընելու համար ինչ բա-
7 նով կապել պէտք է ։ Ու Սամփ-
սոն անոր ըսաւ. Թէ որ զիս եօթը
հատ չչորցած ‖թարմ ջիլերով
կապեն, կը տկարանամ, և ուրիշ
8 մարդոց մէկուն պէս կ'ըլլամ ։ Ու
Փղշտացւոց նախարարները անոր
եօթը հատ չչորցած թարմ ջիլեր
բերին. ու զանիկայ անոնցմով կա-
9 պեց ։ Ու անոր ներքին սենեակին
մէջը դարանակալներ նստեր էին ։
Ու ինքը անոր ըսաւ. Ո՛վ Սամփ-
սոն՝ Փղշտացիք քու վրադ կու գան.
ան ատենը անիկայ ջիլերը՝ կրակի
հոտէն բրդած խծուծէ լարի մը պէս
փրցուց, ու անոր ուժը չհասկը-
10 ցուեցաւ ։ Ու Դալիլա ըսաւ
Սամփսոնին. Ահա՛ զիս խաբեցիր,
ու ինծի սուտ զրուցեցիր. հիմա
կ'աղաչեմ՝ յայտնէ ինծի, թէ ին-
11 չո՞վ կը կապուիս ։ Ու անոր ը-
սաւ. Թէ որ զիս նոր ու չգործա-
ծուած չուաններով աղէկ մը կա-
պեն, ան ատենը կը տկարանամ,
և ուրիշ մարդոց մէկուն պէս կ'ըլ-
12 լամ ։ Ու Դալիլա նոր չուաններ
առաւ, և անոնցմով զանիկայ կա-
պեց, ու անոր ըսաւ. Ո՛վ Սամփ-
սոն՝ Փղշտացիք քու վրադ կու գան.
( և դարանակալները ներքին սե-
նեակին մէջը նստեր էին. ) ան ա-
տենը զանոնք իր թևերէն մէկ դեր-
13 ձանի մը պէս փրցուց ։ Ու Դա-
լիլա ըսաւ Սամփսոնին. Մինչև
հիմա զիս խաբեցիր, և ինծի սուտ
զրուցեցիր. ըսէ ինծի թէ ինչո՞վ
կը կապուիս ։ Ու անիկայ անոր
ըսաւ. Թէ որ գլխուս եօթը բա-
14 ժին մազերը ազբով հիւսես ։ Ու
անիկայ ասնկէս ըրաւ, ու գործա-
րանին ցիցովը ամրացուց, ու անոր
ըսաւ. Ո՛վ Սամփսոն՝ Փղշտացիք
քու վրադ կու գան ։ Ու անիկայ
քունէն արթընցաւ, ու ոստայնին
ցիցը ազբովը մէկտեղ քաշեց տա-
15 րաւ ։ Ան ատենը Դալիլա անոր ը-
սաւ. Գ Քու սիրտդ իմ հետս չէ,
ու ի՞նչպէս կ'ըսես թէ՝ Քեզ կը
սիրեմ. հիմա աս իրեք անգամ է
որ զիս խաբեցիր, ու ինծի չզրուցե-
ցիր՝ թէ քու մեծ զօրութիւնդ ին-
16 չէն է ։ Ու որովհետև ամէն օր իր
խօսքերովը անոր նեղութիւն կու
տար, ու զանիկայ կը բռնադա-
տէր, անանկ որ անոր սիրտը մինչև
մահուան աստիճանը նեղացաւ,
17 Դ Բոլոր իր սրտին մէջի եղածը անոր
զրուցեց, ու ըսաւ անոր. Ե Իմ գըլ-
խուս վրայ ածելի չէ ելած. քան-

Գ Գլ. ԺԴ. 16։

Դ Միք. Է. 5։

Ե Թուոց Զ. 5։ Գլ. ԺԳ. 5։

Ն. Ք. ԴՃ.
Իրր 1120

զի իմ մօրս արգանդէն ես Աստուծոյ
ուխտաւոր եմ . Թէ որ ածիլուիմ,
իմ ուժս ինծմէ կ'երթայ ու կը
տկարանամ, և ամէն մարդոց պէս
18 կ'ըլլամ ։ Ու երբոր Դալիլա տե-
սաւ որ անիկայ բոլոր իր սրտին մէ-
ջի եղածը իրեն զրուցեց , Փղշտա-
ցւոց նախարարները կանչել տուաւ,
ու ըսաւ . Աս անգամ ելէք . քան-
զի բոլոր իր սրտին մէջի եղածը ին-
ծի զրուցեց ։ Ան ատենը Փղշտա-
ցւոց նախարարները անոր քովը ե-
լան , ու արծաթն ալ *հետերնին
19 բերին ։ Եւ Դալիլա զանիկայ իր
ծունկերուն վրայ քնացուց , ու մարդ
մը կանչեց , և անոր գլխուն եօթը
բաժին մազերը ածիլել տուաւ , ու
սկսաւ զանիկայ նեղել . և անոր ու-
20 ժը իրմէն գնաց ։ Ու Դալիլա ըսաւ .
Ո՛վ Սամփսոն՝ Փղշտացիք քու վը-
րադ եկան . և անիկայ քունէն
արթըննալով՝ ըսաւ . Ելլեմ , ու
առջի անգամներուն պէս թօթ-
վուիմ . և անիկայ չէր գիտեր որ
21 Տէրը իրմէ գացեր է ։ Ու Փղշտա-
ցիք զանիկայ բռնեցին , և անոր
աչքերը փորեցին , ու զանիկայ Գա-
զա իջեցուցին , և պղնձապատերով
կապեցին . ու բանտին մէջը աղօ-
րիքի քար կը դարձընէր ։
22 Եւ անոր գլխուն մազը ածիլուե-
23 լէն ետքը՝ բուսնիլ սկսաւ ։ Ու
Փղշտացւոց նախարարները ժող-
վուեցան , որ իրենց աստուծոյն Դա-
գոնին՝ մեծ զոհ մատուցանեն և ու-
րախութիւն ընեն . ու ըսին . Մեր
աստուածը մեր ձեռքը մատնեց մեր
24 թշնամին Սամփսոնը ։ Ու ժողո-
վուրդը զանիկայ տեսնելով՝ իրենց
աստուածը գովեցին . քանզի ըսին .
Մեր աստուածը մեր ձեռքը մատնեց
մեր թշնամին , մեր երկիրը աւրողը
25 և մեր մեռելները շատցընողը ։ Ու
երբոր անոնց սիրտը ուրախ էր ,
ըսին . Սամփսոնը կանչեցէք որ
մեր առջևը խաղայ ։ Ուստի Սամփ-
սոնը բանտէն կանչեցին , ու անոնց
առջևը խաղաց . և զանիկայ սիւնե-
26 րուն մէջտեղը կայնեցուցին ։ Ու
Սամփսոն՝ իր ձեռքէն բռնող պա-
տանիին ըսաւ . Թո՛ղ տուր իս ,
որ աս տունը վերցընող սիւները
բռնեմ , ու անոնց վրայ կռթընիմ ։
27 Եւ տունը էրիկ ու կնիկ մարդիկնե-
րով լեցուն էր . ու Փղշտացւոց բո-
լոր նախարարները հոն էին . և
տանիքին վրայ իրեք հազարի չափ
մարդիկներ ու կնիկներ կային , ո-
րոնք Սամփսոնին խաղալը կը դի-
28 տէին ։ Եւ Սամփսոն Տէրոջը ա-
ղաղակելով՝ ըսաւ . Ո՛վ Տէր Ե-
հովայ , կ'աղաչեմ՝ զիս յիշէ . ով
Աստուած , միայն աս անգամ ալ

*Եբր. իրենց ձեռքը
Դատ. Ե. 26, 27.
Երեմ. ԺԳ. 9, 42, 43. Ցես. Է. 12. Թագ. ԺԴ. 14. ԺԸ. 12. Իբ. 15, 16. Բ Մն. ԺԵ. 2.
Ը Դան. Ե. 4.
Բ Գլ. Թ. 27.
Ժ Բ Օր. Իբ. 8.
Երեմ. ԺԵ. 15.

զիս ուժովցուր , որ Փղշտացիներէն
իմ երկու աչքերուս վրէժը մէկէն
29 առնեմ ։ Ու Սամփսոն՝ ան տունը
վերցընող երկու միջին սիւները՝ մէ-
կը աջ ձեռքովը ու մէկալը ձախ
ձեռքովը բռնելով՝ անոնց վրայ
30 կռթընեցաւ . Եւ Սամփսոն ըսաւ .
Իմ անձս Փղշտացիներուն հետը
մեռնի . ու բոլոր ուժովը ծռեցաւ .
և տունը՝ նախարարներուն ու մէջը
եղող բոլոր ժողովուրդին վրայ ին-
կաւ . և իր մեռած ատենը մեռցու-
ցածները՝ իր կենդանութեան ատե-
նը մեռցուցածներէն աւելի էին ։
31 Ու անոր եղբայրները և բոլոր հօրը
տունը իջան , ու զանիկայ վերցու-
ցին . և հանեցին իր հօրը Մանուէին
գերեզմանը թաղեցին զանիկայ
Սարաայի ու Եսթաւուղի մէջտեղը ։
Եւ անիկայ Իսրայէլի մէջ քսան
տարի դատաւորութիւն ըրաւ ։

Ն. Ք. ԴՃ.
Իրր 1120

Ն Գլ. ԺԳ. 25.

## ԳԼ. ԺԷ

1 Միքա իր մօրմէն գողցած արծաթը անոր կը
դարձընէ . ան ալ կուռքեր շինել կու տայ ։ 5
Միքա անոնց զարդեր շինել կու տայ . 6 ու
Ղևտացի մը վարձքով կը բռնէ իրեն քահա-
նայ ըլլալու ։

1 Ու Եփրեմի լեռնէն՝ Միքա անու-
2 նով մարդ մը կար ։ Եւ անի-
կայ իր մօրը ըսաւ . Քեզմէ առ-
նուած ան հազար հարիւր կտոր
արծաթը՝ որուն համար անէծք
տուիր , ու իմ առջևս զրուցեցիր ,
ահա ան արծաթը իմ քովս է , զա-
նիկայ ես առի . ու մայրը անոր
ըսաւ . Որդեակ իմ , Տէրը քեզ
3 օրհնէ ։ Եւ անիկայ՝ հազար հարիւր
կտոր արծաթը իր մօրը դարձուց .
բայց անոր մայրը ըսաւ . Ես ան
արծաթը իմ ձեռքէս բոլորովին
Տէրոջը նուիրեցի իմ տղուս հա-
մար , անով քանդակած ու թափ-
ծու կուռք շինելու համար . ուստի
հիմա զանիկայ քեզի ետ կու տամ ։
4 Իսկ Միքա ան արծաթը իր մօրը
դարձուց . և մայրը երկու հարիւր
կտոր արծաթ առաւ , ու անոնք
ոսկերիչին տուաւ . ան ալ անոնց-
մով քանդակած ու թափծու կուռք
շինեց . և անոնք Միքային տունը
5 դրուեցան ։ Ու աս մարդը Միքա՝
աստուածներու տուն մը ունեցաւ .
ու եփուտ և թերափիմ շինեց ,
ու իր տղոցը մէկը օրհնեց , որ իրեն
6 քահանայ եղաւ ։ Ան օրերը Իս-
րայէլի մէջ թագաւոր չկար . ամ-
մէն մարդ իր աչքին հաճելի եղածը
կ'ընէր ։
7 Եւ Յուդայի ազգատոհմէն՝ ա
բ Յուդայի Բեթլեհեմէն մէկ պա-
տանի մը կար . և անիկայ Ղևտացի
էր , ու հոն կը բնակէր պանդուխտ
8 պէս ։ Եւ աս մարդը Յուդայի

Իրր 1406
Ծն. ԺԴ. 19. Հռութ. Գ. 10.
Ե Տէր. Եւ. Ի. 4, 23. Ղև. ԺԹ. 4.
Ել. ԽԴ. 6.
Գլ. Ը. 27. Ծն. Լա. 19, 30. Ովս. Գ. 4.
Ղև. ԻԲ. 9. Թագ. ԺԳ. 33.
Գլ. ԺԸ. 1. ԺԹ. 1. Իա. 25. Բ Օր. ԺԲ. 8.
Բ Օր. ԺԲ. 8.
Տես Յես. ԺԹ. 15. Գլ. ԺԹ. 1. Հռութ. Ա. 1, 2. Միք. Ե. 2. Մատ. Բ. 1, 5, 6.

Բեթլեհէմ քաղաքէն ելաւ, որ
պատահած տեղը պանդխտու-
թիւն ընէ, ու ճամբորդութիւն
ընելով՝ մինչև Եփրեմի լեռը
9 մինչև Միքային տունը եկաւ։ Եւ
Միքա անոր ըսաւ. Ո՞ւսկից կու
գաս։ Ու անիկայ անոր ըսաւ. Ես
Ղևտացի եմ, Յուդայի Բեթ-
ղեհեմէն կու գամ, և պատահած
տեղս պանդխտանալու կ'երթամ։
10 Ու Միքա անոր ըսաւ. Իմ քովս
բնակէ, և ինծի հայր ու քահա-
նայ եղիր. և ես քեզի տարուէ տա-
րի տասը կտոր արծաթ, ձեռք մը
փոխելու հանդերձ, ու քու ուտե-
լիքդ կու տամ։ Եւ Ղևտացին
11 հոն գնաց։ Ու Ղևտացին այն մար-
դուն հետը բնակելու հաւանութիւն
տուաւ. և այն պատանին՝ անոր
որդւոցը մէկուն պէս եղաւ անոր։
12 Ու Միքա՝ Ղևտացին օծեց. և
պատանին անոր քահանան եղաւ.
ու Միքային տունը կը բնակէր։
13 Եւ Միքա ըսաւ. Հիմա գիտեմ
որ Տէրը ինծի բարիք պիտի
ընէ, քանզի այս Ղևտացին իմ քա-
հանաս եղաւ։

ԳԼ. ԺԸ

1 Դանի որդիքը հինգ մարդ կը ղրկեն իրենց ժառանգութիւն մը փնտռելու համար։ 3 Անոնք Միքային տունը երթալով՝ խորհուրդ կ'ընեն Յովնաթանին հետ, որ անոնց քաջալերութիւն կու տայ. 7 Լայիսը կը լրտեսեն, ու բարի լուր կը բերեն։ 11 Վեց հարիւր մարդ կը ղրկուի այն քաղաքը առնելու. 14 որոնք իրենց ճամբուն մէջ՝ Միքային քահանան՝ ու անոր սուրբ բաները կը յափշտակեն։ 27 Անոնք Լայիսը առնելով՝ Դան կը կոչեն զանիկայ։ 30 Կուռքերը կը կանգնեն. և Յովնաթան ու անոր որդիքը յաջորդաբար քահանայութիւն կ'ընեն։

1 Այն օրերը Իսրայէլի մէջ թագա-
ւոր չկար, ու այն օրերը Դա-
նի ցեղը իրեն ժառանգութիւն մը
կը փնտռէր՝ բնակելու համար.
քանզի մինչև այն օրը՝ Իսրայէլի ցե-
ղերուն մէջը՝ անոր բաժին ժա-
2 ռանգութիւն ինկած չէր։ Եւ
Դանի որդիքը իրենց ազգատոհմ-
ներէն իրենց սահմաններէն
Սարաայէն ու Եսթաւուղէն՝ հինգ
զօրաւոր մարդ ղրկեցին, որ եր-
կիրը լրտեսեն ու քննեն. և ա-
նոնց ըսին. Գացէ՛ք երկիրը քննե-
ցէ՛ք. ու անոնք Եփրեմի լեռը մին-
չև Միքային տունը եկան, և գի-
3 շերը հոն մնացին։ Ու երբոր անոնք
Միքային տանը քով էին, Ղևտա-
ցի պատանիին ձայնը ճանչցան, և
հոն դարձան, ու ըսին. Ո՞վ քեզ
հոս բերաւ, և դուն հոս ի՞նչ կ'ը-
նես, ու ինչո՞ւ համար հոս կեցեր
4 ես։ Եւ անիկայ ըսաւ անոնց.
Միքան ինծի ասանկ ասանկ ըրաւ,
ու զիս վարձքով բռնեց որ
5 անոր քահանայ ըլլամ։ Եւ ա-
նոր ըսին. Հիմա Աստուծոյ հար-
ցուր, որ գիտնանք թէ արդեօք
մեր գացած ճամբան մեզի պիտի
6 յաջողի՞։ Ու քահանան անոնց
ըսաւ. Խաղաղութեամբ գացէ՛ք.
ձեր երթալու ճամբան Տէրոջը առ-
ջևը հաճելի է։
7 Ան ատենը այն հինգ մարդիկը
գացին՝ Լայիսը մտան, և անոր
մէջը բնակող ժողովուրդը տեսան՝
որ Սիդոնացւոց պէս անհոգու-
թեամբ հանգիստ ու ապահով կը
բնակէին, և այն երկրին մէջը վնաս
տուող մը չկար՝ որ իշխէր անոնց
վրայ. ու Սիդոնացիներէն հեռու
ըլլալով՝ բնաւ մէկ մարդու մը հետ
8 գործ չունէին։ Եւ այն հինգ մարդը
Սարաա ու Եսթաւուղ դարձան
իրենց եղբայրներուն. և անոնց եղ-
բայրները անոնց ըսին. Դուք ի՞նչ
9 ըրիք։ Ու անոնք ըսին. Ելէ՛ք,
անոնց վրայ երթանք. քանզի մենք
երկիրը տեսանք, և ահա շատ ա-
ղէկ է. ու դուք դեռ կը կենաք.
երթալու երկիրը ժառանգելու
համար հոն մտնելու անհոգութիւն
10 մի՛ ընէք։ Երբոր հոն մտնէք, մէկ
անհոգ ժողովուրդի մը ու շատ
ընդարձակ երկրի մը մէջ պիտի
մտնէք, որ Աստուած զանիկայ ձեր
ձեռքը տուեր է. այն անանկ
տեղ մըն է՝ որ հոն երկրի վրայ ե-
ղող բաներուն մէկը պակաս չէ։
11 Եւ Դանի ազգատոհմէն, այնկէ՝
Սարաայէն ու Եսթաւուղէն
վեց հարիւր սպառազինեալ մարդիկ
12 գացին։ Ու ելան Յուդայի Կա-
րիաթարիմը բանակեցան. անոր
համար այն տեղը՝ մինչև աս օրս
Մահանէդան կ'ըսուի. ահա ա-
նիկայ՝ Կարիաթարիմին ետևն է։
13 Եւ անկէ Եփրեմի լեռը անցան, ու
14 մինչև Միքային տունը եկան։ Եւ
Լայիսի երկիրը լրտեսելու գացող
այն հինգ մարդը պատասխան տա-
լով՝ իրենց եղբարցը ըսին. Գիտէ՞ք
որ աս տուներուն մէջը՝ եփուտ,
թերափիմ, և քանդակած ու
թափծու կուռք կայ. ու հիմա ձեր
15 ընելու բանը գիտցէ՛ք։ Ան ատենը
անոնք դէպ'ի հոն դառնալով՝ այն
Ղևտացի պատանիին տունը՝ Մի-
քային տունը մտան, ու անոր ող-
16 ջունութիւնը հարցուցին։ Եւ Դանի
որդւոցմէ եղող այն վեց հարիւր
սպառազինեալ մարդիկները դրանը
17 բերանը կայնեցան։ Ու երկիրը լըր-
տեսելու գացող այն հինգ մար-
դիկները հոն մտան, և քանդա-
կած կուռքը, եփուտը, թերափի-
մը ու թափծու կուռքը առին և

Ն. Ք. Գ. Ք. Իբր 1406

քահանան ան վեց հարիւր սպա-
ռազինեալ մարդիկներուն հետ դը-
18 րանը բերանը կայներ էր ։ Ու երբոր
անոնք Միքային տունը մտան , և
քանդակած կուռքը , եփուտը ,
թերափիմը ու թափծու կուռքը
առին , քահանան անոնց ըսաւ .
19 Դուք ի՞նչ կ'ընէք ։ Ու անոնք ը-
սին անոր . Լուռ կեցիր , ձեռքդ
բերնիդ վրայ դիր , ու մեր հետը
եկուր , ու մեզի հայր ու քահանայ
եղիր . քեզի մէկ մարդու մը տանը
քահանայ ըլլա՞լը աղէկ է , թէ Իս-
րայէլի մէկ ցեղին ու մէկ ազգատոհ-
20 մին քահանայ ըլլալը ։ Եւ քահա-
նան սրտին մէջը ուրախանալով՝
եփուտը , թերափիմը և քանդա-
կած կուռքը առաւ , ու ժողո-
21 վուրդին մէջը մտաւ ։ Եւ անոնք
դարձան գացին , ու ընտանիքները
և անասունները ու թանկագին
կարասիները իրենց առջևը դրին ։
22 Երբոր անոնք Միքային տունէն
հեռացան , Միքային տանը մօտ ե-
ղող տուներուն մարդիկը ժողվուե-
ցան , ու Դանի որդւոցը ետևէն
23 հասան . Եւ Դանի որդւոցը ետևէն
կանչվըռտեցին , որոնք երեսնին
դարձուցին՝ ու Միքային ըսին .
Քեզի ի՞նչ եղաւ՝ որ այսչափ *բազ-
24 մութիւնով կու գաս" ։ Եւ անիկայ
ըսաւ . Իմ շինած աստուածներս՝
ու քահանան առիք գացիք , և ասկէ
ետև ինծի ի՞նչ կը մնայ . ու ինծի
ինչո՞ւ համար կ'ըսէք թէ՝ Քեզի
25 ի՞նչ եղաւ ։ Եւ Դանի որդիքը
անոր ըսին . Մեր մէջը քու ձայնդ
չլսուի . չըլլայ որ Ըբարկասիրտ
մարդիկները ձեր վրայ յարձակին ,
ու քու կեանքդ և քու ընտանեացդ
26 կեանքը կորսընցընես ։ Ու Դանի
որդիքը իրենց ճամբան գացին . և
Միքա տեսնելով որ անոնք իրմէն
զօրաւոր են , դարձաւ իր տունը
գնաց ։
27 Ու անոնք Միքային շինածները
և անոր քահանան առին ու Լա-
յիսի վրայ՝ հանգիստ և անհոգ կե-
ցող ժողովուրդի մը վրայ գացին ,
ու զանոնք սուրի բերնէ անցընե-
28 լով՝ քաղաքը կրակով այրեցին ։ Եւ
անոնք Սիդոնէն հեռու ըլլալնուն ,
ու մարդու մը հետ գործ չունենալ-
նուն համար , ազատող մը
չկար . և ան երկիրը Բեթրոոբի
հովիտին մէջն էր . ու քաղաքը շի-
նեցին , և անոր մէջը բնակեցան ։
29 Ու քաղաքին անունը իրենց հօրը
Իսրայէլեան Դանին անունովը՝
Դան կոչեցին . բայց քաղաքին
30 անունը առաջուց Լայիս էր ։ Եւ
Դանի որդիքը՝ քանդակած կուռ-
քը կանգնեցին իրենց ու Մանա-
սէի որդւոյն Գերսոնին որդին Յով-
նաթանը , ինքը ու իր որդիքը՝
մինչև երկրին գերութեան օրը՝
Դանի ցեղին քահանաներն էին ։
31 Ուստի անոնք Միքային շինած
կուռքը իրենց պահեցին , որչափ
ժամանակ որ Աստուծոյ տունը Սե-
լովի մէջ էր ։

Ն. Ք. Գ. Ք. Իբր 1406

Ծնն. խա. 5 ։ Իմ. 9 ։ Խ. 4 ։ Առակ. Լ. 32 ։ Միք. Է. 16 ։
Գլ. ժԷ. 10 ։
* ժողվուեցար ։
Բ Թագ. ԺԷ. 8 ։
Հմր 7 ։ 10 ։ Բ Օր. ԼԳ. 22 ։
Յես. ԺԹ. 47 ։
Հմր 7 ։
Թուոց. ԺԳ. 22 ։ Բ Թագ. Ժ. 6 ։
Յես. ԺԹ. 47 ։
Ծն. ԺԴ. 14 ։ Գլ. Ի. 1 ։ Գ Թագ. ԺԲ. 29 ։ 30 ։ ԺԵ. 20 ։
Գլ. ԺԳ. 1 ։ Ա Թագ. Դ. 2 ։ 3 ։ 10 ։ 11 ։ Սաղ. ՀԸ. 60 ։ 61 ։
Յես. ԺԸ. 1 ։ Գլ. ԺԹ. 18 ։ Իա. 12 ։

## ԳԼ. ԺԹ

1 Ղևտացի մը Բեթլէհէմ կ'երթայ՝ իր հարճը տուն դարձընելու համար ։ 16 Ծեր մարդ մը Գաբաայի մէջ իր տունը կ'ընդունի զանիկայ ։ 22 Գաբաացիք կը լլկեն անոր հարճը , որ կը մեռնի ։ 29 Իսկ Ղևտացին տասուերկու կտորի բաժնելով զանիկայ՝ տասուերկու ցեղերուն կը ղրկէ ։

1 Ու եղաւ որ՝ ( ան օրերը որ Իս-
րայէլի մէջ թագաւոր չկար , )
Եփրեմի լեռանը կողմերը բնակող
մէկ պանդուխտ Ղևտացի մը կար .
ու անիկայ՝ Յուդայի Բեթլէհէ-
2 մէն մէկ հարճ մը առաւ իրեն ։ Եւ
անոր հարճը շնութիւն ընելով՝ ան-
կէ իր հօրը տունը՝ Յուդայի Բեթ-
լէհէմը գնաց , ու չորս ամիսի չափ
3 հոն կեցաւ ։ Եւ էրիկը ելաւ անոր
ետևէն գնաց , որ քաղցրութեամբ
խօսի անոր հետ՝ ու զանիկայ ետ
բերէ . և իր հետը առեր էր իր ծա-
ռան՝ ու երկու էշ . ու կինը զանի-
կայ իր հօրը տունը տարաւ . և
աղջկան հայրը երբոր զանիկայ տե-
սաւ , ուրախութեամբ զանիկայ
4 դիմաւորեց ։ Ու աղջկան հայրը ա-
նոր աները՝ զանիկայ ներս առաւ .
և իրեք օր անոր հետը նստաւ . կե-
րան խմեցին ու գիշերները հոն մը-
նացին ։
5 Եւ չորրորդ օրը՝ երբոր առաւօ-
տուն կանուխ ելան , անիկայ ոտք
ելաւ որ երթայ . բայց աղջկան
հայրը իր փեսային ըսաւ . Կտոր մը
հաց կեր , որ սիրտդ ուժովնայ , ու
6 ետքը կ'երթաք . Եւ նստան , ու
երկուքը մէկտեղ կերան և խմեցին .
ու աղջկան հայրը ան մարդուն ը-
սաւ . Կ'աղաչեմ , աս գիշեր ալ
հոս կեցիր , ու սիրտդ զուարճա-
7 նայ ։ Եւ ան մարդը ելաւ որ եր-
թայ . բայց անոր աները զանիկայ
բռնադատելուն համար , դարձաւ
8 գիշերը հոն մնաց ։ Ու հինգերորդ
օրը՝ առաւօտուն կանուխ ելաւ որ
երթայ և աղջկան հայրը ըսաւ .
Կ'աղաչեմ , սիրտդ ուժովցուր . և
ուշացան մինչև կէս օրը անցնիլը , ու
9 երկուքը մէկտեղ կերան ։ Ու ան
մարդը ելաւ , ինքը՝ իր հարճը ու իր
ծառան՝ ճամբայ երթալու համար .
բայց անոր աները աղջկան հայրը
ըսաւ անոր . Ահա օրը իրիկուն ըլ-
լալու վրայ է . կ'աղաչեմ , գիշերը
հոս մնացէք ահա օրը կ'իջնէ

Գլ. ԺԷ. 6 ։ ԺԸ. 1 ։ Իա. 25 ։
Գլ. ԺԷ. 7 ։
Ծն. ԼԴ. 3 ։
Ծն. ԺԸ. 5 ։

Ն. Ք. Դ. Ք. Իրր 1406

դիշերը հոս կեցիր, ու սիրտդ
զուարճանայ. և վաղը կանուխ
ճամբայ ելէք՝ ու ձեր վրանը գա-
10 ցէք: Եւ այն մարդը գիշերը մնալ
չուզեց, ու ելաւ գնաց, ու մինչև
Յեբուսին՝ այսինքն Երուսաղէմին
դիմացը եկաւ և իր հետը երկու
համետած էշ ունէր, ու իր հարճն
ալ իր հետն էր:
11 Ու երբոր Յեբուսին մօտեցան,
օրը շատ անցած ըլլալուն համար,
ծառան իր տիրոջը ըսաւ. Եկուր
աս Յեբուսացւոց քաղաքը խոտո-
12 րինք, ու գիշերը հոն մնանք: Բայց
տէրը անոր ըսաւ. Իսրայէլի որ-
դւոցմէ չեղող օտարազգիներուն
քաղաքը չխոտորինք. հապա մինչև
13 Գաբաա անցնինք: Եւ իր ծա-
ռային ըսաւ. Եկո՛ւր այն տեղերուն
մէկուն մօտենանք, ու գիշերը Գա-
բաայի կամ Ռամայի մէջ մնանք:
14 Եւ անցան գացին. ու երբոր Բե-
նիամինի Գաբաային մօտեցան, ա-
15 րեւ մտաւ: Եւ հոն դարձան, որ
Գաբաա մտնեն՝ ու գիշերը հոն մը-
նան. և գնաց քաղաքին հրապա-
րակին մէջը նստաւ. ու մարդ մը
չկար որ զանոնք իր տունը առնէ՝
գիշերը անցընելու համար:
16 Եւ ահա իրիկունը արտէն մէկ
ծեր մարդ մը կու գար՝ իր գործէն
դառնալով. ու անիկայ Եփրեմի
լեռնէն էր. և Գաբաայի մէջ պան-
դըխտացեր էր. ու այն տեղին բնա-
17 կիչները՝ Բենիամինեանք էին: Ու
երբոր անիկայ աչքերը վերցուց, և
ճամբորդ մարդը քաղաքին հրապա-
րակին մէջը տեսաւ, ծեր մարդը ը-
սաւ. Ո՞ւր կ'երթաս, և ուսկից
18 կու գաս: Ու անիկայ ըսաւ. Մենք
Յուդայի Բեթլեհեմէն մինչև Եփ-
րեմի լեռանը կողմերը կ'անցնինք.
ես այն տեղացի եմ, ու մինչև Յու-
դայի Բեթլեհեմը գացի, և հիմա
Տէրոջը տունը կ'երթամ. ու զիս
իր տունը ընդունող մարդ մը չը-
19 կայ. Բայց մեր էշերուն համար
յարդ ու ճարակ կայ. և ինծի հա-
մար, քու աղախինիդ համար, ու
քու ծառայիդ հետ եղող մանչուն
համար հաց ու գինի ունիմ. բնաւ
20 մէկ բան մը պակաս չէ: Եւ այն
ծեր մարդը ըսաւ. Խաղաղութիւն
քեզի. քու ամէն պակասութեանդ
հոգը իմ վրաս ըլլայ. բայց գիշերը
21 հրապարակին մէջ մի՛ մնար: Ու
զանիկայ իր տունը տարաւ, և էշե-
րուն կեր տուաւ. ու անոնք ոտ-
քերնին լուալէն ետքը, կերան և
խմեցին:
22 Ու երբոր անոնց սիրտը կը զուար-
ճանար, ահա քաղաքին բնակիչ-
ներէն չար մարդիկներ՝ տանը չորս

ե Յես. ժը. 28:
զ Յես. ժե. 8, 63: Դտ. ա. 21: Բ Թագ. ե. 6:
է Յես. ժը. 28:
ը Յես. ժը. 25:
թ Մատ. իե. 43: Եբր. ժգ. 2:
ժ Սաղ. ճդ. 23:
ի Յես. ժը. 1: Դտ. ժը. 31: ի. 18: Ա Թագ. ա. 3, 7:
լ Հմր 15:
խ Ծն. խգ. 23: Դտ. զ. 23:
ծ Ծն. ժթ. 2:
կ Ծն. իդ. 32: խգ. 24:
հ Ծն. ժը. 4: Յով. ժգ. 5:
ձ Ծն. ժթ. 4: Դտ. ի. 5: Ովս. թ. 9: ժ. 9:
ղ Բ Օր. ժգ. 13:

կողմը պաշարեցին, ու դուռը ձեռք
առին. և տանը տիրոջը՝ այն ծեր
մարդուն հետ խօսեցան ու ըսին.
Տունդ եկող մարդը հանէ, որ
23 զանիկայ գիտնանք: Եւ այն
տանուտէր մարդը անոնց ելաւ, ու
անոնց ըսաւ. Չէ, եղբայրներս.
կ'աղաչեմ, գէշութիւն մի՛ ընէք.
աս մարդը իմ տունս մտնելէն ետ-
քը, այս անզգամութիւնը մի՛ ը-
24 նէք: Ահա իմ կոյս աղջիկս, ու
այն մարդուն հարճը հիմա ձեզի հա-
նեմ, և զանոնք լլկեցէ՛ք, ու ձեր
ուզածը ըրէ՛ք անոնց, և աս մար-
դուն՝ աս անզգամութեան գործը
25 մի՛ ընէք: Բայց այն մարդիկները
չուզեցին անոր խօսքը մտիկ ընել.
ու այն մարդը՝ իր հարճը բռնեց
դուրս հանեց անոնց. և անոնք զա-
նիկայ գիտցան, ու բոլոր գիշերը
զանիկայ լլկեցին մինչև առաւօտ.
ու երբոր արշալոյսը ծագեցաւ,
զանիկայ թող տուին որ երթայ:
26 Եւ այն կնիկը առտուան դէմ գնաց,
ու ինկաւ այն մարդուն տանը դրա-
նը առջևը, ուր որ իր տէրը կը կե-
նար. մինչև որ լուսացաւ՝ հոն
27 մնաց: Եւ անոր Տէրը առաւօտուն
ելաւ, տանը դռները բացաւ, որ
ելլէ իր ճամբան երթայ. և ահա
կնիկը՝ իր հարճը տանը դրանը առ-
ջին ինկեր էր, և ձեռքերը սեմին
28 վրայ էր: Ու անոր ըսաւ. Ելի՛ր եր-
թանք. բայց պատասխան տուող
չկար: Ան ատենը զանիկայ իր է-
շուն վրայ դրաւ, ու մարդը ելաւ
29 իր տեղը գնաց: Եւ երբոր իր
տունը հասաւ, դանակ մը առաւ,
ու իր հարճը բռնեց և զանիկայ
ոսկորներովը տասուերկու կտորի
բաժնեց, ու Իսրայէլին ամէն սահ-
30 մանները խրկեց: Եւ ամէն տես-
նողները կ'ըսէին թէ՝ Իսրայէլի որ-
դւոցը Եգիպտոսի երկրէն ելած օրէն
մինչև աս օրս՝ ասանկ բան մը ոչ
եղեր է, ոչ ալ տեսնուեր է. ասոր
վրայ մտածեցէ՛ք, խորհուրդ ըրէք
ու խօսեցէ՛ք:

## ԳԼ. Ի

1 Ղևտացին իրեն եղած զրկանքը ժողովքին կը պատմէ: 8 Ժողովքին վճիռը: 12 Բենիամինեանք Իսրայէլացւոց պահանջմունքներուն մտիկ չընելով՝ գլուխ կը վերցընեն: 18 Իսրայէլացիք երկու անգամ պատերազմ ընելով՝ իրենցմէ քառասուն հազար մարդ կը մեռնի: 26 Ետքը մէկ հնարքով մը բոլոր Բենիամինեանները կը ջարդեն, բաց 'ի վեց հարիւր հոգիէն՝ որոնք կ'ազատուին:

1 Ան ատենը բոլոր Իսրայէլի որդի-
քը ելան, ու ժողովքը՝ մէկ մար-
դու մը պէս Դանէն մինչև Բերսա-
բէէ՝ Գաղաադու երկիրը՝ Մասփա-
յի մէջ Տէրոջը առջևը ժողվուեցան:
2 Եւ բոլոր ժողովուրդին՝ Իսրայէլի

Ն. Ք. Դ. Ք. Իրր 1406

ճ Ծն. ժթ. 5: Հռով. ա. 26, 27:
մ Ծն. ժթ. 6, 7:
յ Բ Թագ. ժգ. 12:
ն Ծն. ժթ. 8:
շ Ծն. լդ. 2: Բ Օր. իա. 14:
ո Ծն. դ. 1:
չ Դտ. ի. 5:
պ Դտ. ի. 6: Տես Ա Թագ. ժա. 7:
ջ Դտ. ի. 7: Առակ. ժգ. 10:
ռ Բ Օր. ժգ. 12: Յես. իբ. 12: Դտ. իա. 5: Ա Թագ. ժա. 7:
ս Դտ. ժը. 29: Ա Թագ. գ. 20: Բ Թագ. գ. 10: իդ. 2:
վ Դտ. ժ. 17: ժա. 11: Ա Թագ. է. 5: ժ. 17:

Ն. Ք. ԳՔ. Եռ 1406

բոլոր ցեղերուն գլխաւոր մարդիկ-
ները՝ չորս հարիւր հազար սուր
քաշող հետեւակ զօրք ըլլալով Աս-
տուծոյ ժողովուրդին ժողովքին
3 մէջը ներկայացան ։ Եւ Բենիամինի
որդիները լսեցին որ Իսրայէլի որդիները
Մասփա ելեր են ։ Ու Իսրայէլի
որդիները ըսին . Մեզի պատմեցէք .
թէ աս չարութիւնը ի՞նչպէս ե-
4 ղաւ ։ Եւ ան Ղեւտացի մարդը՝
մեռցուած կնկանը էրիկը պատաս-
խան տուաւ ու ըսաւ . [բ]Ես ու իմ
հարճս Բենիամինի Գաբաան ե-
5 կանք , որ գիշերը հոն մնանք . [գ]Եւ
Գաբաային բնակիչները ինծի դէմ
ոտք ելան , ու գիշերով իմ եղած
տունս պաշարեցին , և զիս մեռցը-
նել կ'ուզէին , [դ]ու իմ հարճս լլկե-
6 ցին , և մեռաւ . [ե]Ես ալ իմ հարճս
առի , ու զանիկայ կտոր կտոր ըրի ,
և Իսրայէլի ժառանգութեանը բո-
լոր երկիրը ղրկեցի . քանզի անոնք
[զ]Իսրայէլի մէջ մեծ յանցանք ու
7 անզգամութիւն ըրին ։ Ահա դուք
ամէնքդ ալ Իսրայէլի որդիք էք .
[է]Հոս ձեր մէջը խօսեցէք ու խոր-
8 հուրդ ըրէք ։ Եւ բոլոր ժողովուր-
դը մէկ մարդու մը պէս ոտք ելաւ ,
ու ըսաւ . Մեզմէ բնաւ մէկը իր
վրանը պիտի չերթայ , ու բնաւ մէ-
9 կը իր տունը չդառնայ ։ Եւ հիմա
Գաբաային ընելու բաներնիս աս-
կայ է . անոր վրայ վիճակով եր-
10 թանք . Ու Իսրայէլին ամէն ցեղերէն՝
հարիւրէն՝ տասը , և հազարէն՝ հա-
րիւր , ու տասը հազարէն՝ հազար
մարդ առնենք , որ ժողովուրդին
պաշար տանին . անոնք ալ Բենիա-
մինի Գաբաան մտնելով , անոր [illegible]
Իսրայէլի մէջ ըրած բոլոր
անզգամութեանը փոխարէնը հա-
11 տուցանեն . Եւ ան քաղաքին վրայ
երթալու համար՝ Իսրայէլի բոլոր
մարդիկները՝ մէկ մարդու մը պէս՝
միաբանութեամբ ժողվուեցան ։
12 [ը]Ու Իսրայէլի ցեղերը՝ Բենիամի-
նին բոլոր ցեղին մարդիկներ ղրկե-
ցին , ու ըսին . Աս ի՞նչ չարու-
13 թիւն է որ ձեր մէջը եղաւ ։ Եւ հի-
մա Գաբաայի մէջ եղող Նան չար
մարդիկները տուէք . որ զանոնք
մեռցընենք , ու [թ]չարութիւնը Իս-
րայէլէն վերցընենք . Բայց Բենիա-
մինեանք իրենց եղբայրը՝ Իսրայէլի
որդւոց խօսքը մտիկ ընել չուզե-
14 ցին . Ու Բենիամինի որդիքը՝ Իս-
րայէլի որդւոցը դէմ պատերազմ
ընելու համար՝ իրենց քաղաքներէն
15 Գաբաայի մէջ ժողվուեցան ։ Եւ
ան օրը իրենց քաղաքներէն ելլող
Բենիամինի որդիքը համրուեցան .
քսանուվեց հազար սուր քաշող
մարդ գտնուեցան , բաց 'ի Գա-

ա Գւ. ը. 10։
բ Գւ. ժթ. 15։
գ Գւ. ժթ. 22։
դ Գւ. ժթ. 25, 26։
ե Գւ. ժթ. 29։
զ Յես. է. 15։
է Գւ. ժթ. 30։
ը Օր. ժգ. 14։ Յես. ի. 13, 16։
թ Օր. ժգ. 13։ Գւ. ժթ. 22։
ի Օր. ժէ. 12։

բաայի բնակիչներէն՝ որոնք եօթը
հարիւր ընտիր մարդիկ համրուե-
16 ցան ։ Աս բոլոր ժողովուրդին մէ-
ջը եօթը հարիւր ընտրուած [ժ]ձախ-
կաղորդ մարդիկներ կային , որոնց
ամէնն ալ պարսատիկով մազի վրայ
քար կը նետէին առանց վրիպելու ։
17 Եւ Իսրայէլի մարդիկներն ալ համ-
րուեցան . ու Բենիամինէն 'ի զատ՝
չորս հարիւր հազար սուր քաշող
մարդ գտնուեցաւ . ասոնք ամէնն
ալ պատերազմող մարդիկներ էին ։
18 Ու գացին՝ [*]Բեթէլը ելան . և
Իսրայէլի որդիքը [ժա]Աստուծոյ հար-
ցուցին ու ըսին . Բենիամինի հետ
պատերազմելու համար՝ ո՞վ մեզի
առաջնորդ ըլլայ . և Տէրը ըսաւ .
19 Յուդան առաջնորդ ըլլայ ։ Ու
Իսրայէլի որդիքը առաւօտուն ե-
լան , և Գաբաային գիմացը բանա-
20 կեցան ։ Ու Իսրայէլացիք Բենիա-
մինի հետ պատերազմ ընելու ելան .
և Իսրայէլացիք Գաբաային քովը
անոնց դէմ շարուեցան պատերազմի
21 համար ։ Ու [ժբ]Բենիամինի որդիքը
Գաբաայէն ելան . և ան օրը Իսրա-
յէլէն քսանուերկու հազար մարդ
22 գետինը փռեցին ։ Ու ժողովուրդը՝
[illegible] Իսրայէլացիք ուժովցան , և
նորէն գացին պատերազմելու հա-
մար շարուեցան նոյն տեղը , ուր որ
23 առջի օրը շարուեր էին ։ ([ժգ]Ու Իս-
րայէլի որդիքը ելան , և Տէրոջը
առջևը մինչև իրիկուն լացին , ու
Տէրոջը հարցընելով՝ ըսին . Մեր
եղբօրը Բենիամինին հետ պատե-
րազմելու համար նորէն ելլե՞նք .
և Տէրը ըսաւ . Անոր դէմ ելէք ։)
24 Ու երկրորդ օրը՝ Իսրայէլի որդիքը
Բենիամինի որդւոցը մօտեցան ։
25 Ու [ժդ]երկրորդ օրը՝ Բենիամինեանք
Գաբաայէն անոնց դէմ ելան պա-
տերազմելու համար . և Իսրայէլի որ-
դւոցմէ նորէն տասնուութը հազար
մարդ գետինը փռեցին . ասոնց ա-
մէնն ալ սուր քաշող մարդիկներ
էին ։
26 Ան ատենը բոլոր Իսրայէլի որ-
դիքը՝ այսինքն բոլոր ժողովուրդը
[ժե]ելան [†]Բեթէլը գացին . ու հոն
Տէրոջը առջևը նստան լացին . և
ան օրը մինչև իրիկուն ծոմ պահե-
ցին . ու Տէրոջը առջևը ողջակէզ-
ներ և խաղաղութեան զոհեր մա-
27 տուցին ։ Ու Իսրայէլի որդիքը
Տէրոջը հարցուցին . (ու ան օրերը
[ժզ]Աստուծոյ ուխտին տապանակը
28 հոն էր . Եւ ան օրերը՝ անոր առ-
ջևը [ժէ]Ահարոնեան Եղիազարին որ-
դին Փենեհէսը [ժը]կը կայնէր .) ու
ըսին . Մեր եղբօրը Բենիամինին որ-
դւոցը հետ պատերազմելու համար
նորէն մէյմըն ալ ելլե՞նք , թէ ետ

Ն. Ք. ԳՔ. Եռ 1406

ժ Գւ. գ. 15։ Ա Մն. ժբ. 2։
* Կամ՝ Աստուծոյ տունը . անս հմր 23, 26։
ժա Թու. իէ. 21։ Գւ. ա. 1։
ժբ Ծն. խթ. 27։
ժգ Հմր 26, 27։
ժդ Հմր 21։
ժե Հմր 18։
† Կամ՝ Աստուծոյ տունը
ժզ Յես. ժր. 1։ Ա Թագ. դ. 3, 4։
ժէ Յես. իդ. 33։
ժը Օր. ժ. 8։ ժը. 5։

Ն · Ք · ԳՔ · Եռր 1406

քաշուինք ։ Եւ Տէրը ըսաւ ․ Ե-
լէ՛ք ․ քանզի վաղը զանոնք ձեր
ձեռքը պիտի մատնեմ ։

ՆՅես․ ը․ 4։
29 Ու Իսրայէլացիք ՆԳաբաային
բոլորտիքը դարանակալներ դրին ։
30 Եւ Իսրայէլի որդիքը երրորդ օրը
Բենիամինի որդւոցը վրայ գացին ,
ու մէկալ անգամներուն պէս Գա-
31 բաային դիմացը շարուեցան ։ Ան
ատենը Բենիամինի որդիքը ժողո-
վուրդին դէմը ելան , և քաղաքէն
զատուեցան , ու առջի անգամնե-
րուն պէս սկսան ժողովուրդը
զարնել , ու երսունի չափ Իսրայէ-
լացի մեռցուցին ան ճամբաներուն
մէջը՝ որոնց մէկը Բեթէլ կ'ելլէր ,
32 ու մէկալը դաշտի Գաբաան ։ Եւ
Բենիամինի որդիքը ըսին ․ Ահա ա-
նոնք մեր առջևը առջի անգամնե-
րուն պէս կը կոտրուին ։ Ու Իսրա-
յէլի որդիքը ըսին ․ Փախչի՛նք՝ ու
զանոնք քաղաքէն դուրս ճամբա-
33 ները հանենք ։ Եւ Իսրայէլին բոլոր
մարդիկները իրենց տեղէն ելան , ու
Բաալթամարին առջևը շարուե-
ցան ։ Եւ Իսրայէլին դարանակալները
յանկարծ իրենց տեղէն՝ Գաբաայի
34 դաշտէն դուրս ելան ։ Ու Գաբաա-
յին առջևը՝ բոլոր Իսրայէլէն տասը
հազար ընտրուած մարդ եկան ․ և
պատերազմը սաստկացաւ ․ ՕՈւ ա-
նոնք չէին գիտեր որ իրենց վրայ
35 չարիք հասեր է ։ Եւ Տէրը Իսրայէ-
լին առջևը Բենիամինը զարկաւ ․ ու
ան օրը Իսրայէլի որդիքը Բենիա-
մինէն քսանուհինգ հազար հարիւր
մարդ կոտրեցին ․ անոնց ամէնն ալ
36 սուր քաշող մարդիկներ էին ։ Եւ
Բենիամինի որդիքը իրենց յաղ-
թուիլը տեսան ․ Նքանզի Իսրայէ-
լացիք՝ Գաբաային բոլորտիքը դը-
րած դարանակալներուն ապաւինե-
լով՝ Բենիամինեանց տեղ տուին ։
37 ԴԵւ դարանակալները շուտով Գա-
բաային վրայ յարձակեցան , ու դա-
րանակալները մէջտեղ տարա-
ծուեցան , և բոլոր քաղաքը սուրի
38 բերնէ անցուցին ։ Ու Իսրայէլացիք
դարանակալներուն հետ՝ *ժամա-
նակ մը որոշեր էին , որ քաղաքէն
39 մեծ կրակով ծուխ հանեն ։ Ան ա-
տենը Իսրայէլի մարդիկը պատե-
րազմին մէջը փախուստ ցուցուցին ․
ու Բենիամինեանք սկսան Իսրայէ-
լացիները զարնել , ու երսուն մար-
դու չափ մեռցուցին ․ քանզի ըսին
թէ՝ Անտարակոյս անոնք մեր առ-
ջևը՝ առջի պատերազմին պէս կը
40 կոտրուին ։ Բայց երբոր քաղա-
քէն՝ կրակին ծուխը սիւնի պէս
բարձրանալ սկսաւ , Բենիամի-
նեանք Լետևնին դառնալով՝ նա-
յեցան որ քաղաքին հրդեհը եր-

ՕՅես․ ը․ 14։ Ես․ խէ․ 11։

ՆՅես․ ը․ 15։

ԴՅես․ ը․ 19։

* Կամ՝ Նշան

ԼՅես․ ը․ 20։

41 կինքը կ'ելլէր ։ Ու երբոր Իսրա-
յէլացիները նորէն ետ դարձան ,
Բենիամինեանք ապշեցան մնացին ,
քանզի տեսան որ չարիքը իրենց
42 վրայ հասեր էր ։ Ուստի անոնք
Իսրայէլացւոց առջևէն դէպ ՚ի ա-
նապատին ճամբան դարձան ․ բայց
պատերազմը անոնց հասաւ ․ ու
քաղաքներէն ելլողները զանոնք ի-
43 րենց մէջը մեռցուցին ։ Այսպէս
Բենիամինեանները պաշարեցին ,
զանոնք հալածեցին , ու զանոնք
դիւրութեամբ մինչև Գաբաային
դիմացը՝ արևելեան կողմն՝ զար-
44 կին ։ Եւ Բենիամինէն տասնու-
ութը հազար մարդ ինկաւ ․ անոնց
ամէնն ալ զօրաւոր մարդիկներ էին ։
45 Ու մնացածները դարձան դէպ ՚ի ա-
նապատը՝ ՃՌեմոնի վէմը փախան ․
անոնցմէ՝ ճամբաներուն մէջը՝ հինգ
հազար մարդ ճռաքաղ ըրին ․ և
զանոնք մինչև Գեդոմը հալածելով՝
անոնցմէ երկու հազար մարդ զար-
46 կին ։ Ու Բենիամինէն՝ ան օրը բո-
լոր ինկածները քսանուհինգ հազար
սուր քաշող մարդ էր ․ անոնց ա-
մէնն ալ զօրաւոր մարդիկներ էին ։
47 ՕԵւ վեց հարիւր մարդ դարձան , ու
անապատը՝ Ռեմոնի վէմը փախան ,
ու Ռեմոնի վէմը չորս ամիս կեցան ։
48 Եւ Իսրայէլացիք Բենիամինի որ-
դւոցը դառնալով , զանոնք սուրի
բերնէ անցուցին , քաղաքներուն
մէջի մարդիկներէն մինչև անասուն-
ները , ու ինչ որ գտնուեցաւ ․ ու
բոլոր գտնուած քաղաքներն ալ կը-
րակով այրեցին ։

Ն · Ք · ԳՔ · Եռր 1406

ՃՅես․ ժե․ 32։

ՕԳլ․ ԻԱ․ 13։

## ԳԼ․ ԻԱ

1 Ժողովուրդը Բենիամինի ցեղին կորստեանը վրայ կ'ողբան ․ 8 Գաղաադու Յաբիսը կը կործանեն , ու անկէ չորս հարիւր աղջիկ առնելով՝ ողջ մնացած Բենիամինեանց կնիկ ըլլալու կու տան ․ 16 Նաև կը խրատեն զա-նոնք՝ որ Սելովի մէջ պար բռնող աղջիկներէն ալ յափշտակեն ․

1 Ու ՃԻսրայէլի մարդիկները Մասս-
փայի մէջ երդում ըրեր էին ,
ու ըսեր էին թէ՝ Մեզմէ բնաւ մէկ
մարդ մը իր աղջիկը Բենիամինին
2 կնիկ ըլլալու չտայ ։ Եւ ժողովուր-
դը †Բեթէլ երթալով՝ հոն Աս-
տուծոյ առջևը մինչև իրիկուն նըս-
տան , ու ձայներնին վերցընելով՝
3 մեծ լացով մը լացին , Եւ ըսին ․
Ո՛վ Իսրայէլին Տէր Աստուածը ,
ինչու համար աս բանը Իսրայէլի
մէջ պատահեցաւ , որ այսօր Իս-
4 րայէլէն ցեղ մը պակսի ։ Ու հե-
տևեալ օրը ժողովուրդը կանուխ ե-
լաւ , և Եհոն սեղան մը շինեցին ,
ու ողջակէզներ և խաղաղութեան
զոհեր մատուցին ։

ՃԳլ․ Ի․ 1։

† Կամ՝ Աստուծոյ տունը․ Գլ․ Ի․ 18, 26։

Ե Բ Թագ․ իդ․ 25։

Ն․ Ք․ ԶՔ․ ԻՐՐ 1406

5 Ու Իսրայէլի որդիքը ըսին․ Իս-
րայէլին ամէն ցեղերէն՝ ժողովուր-
դին հետ Տէրոջը առջեւը չելլողը
ո՞վ է․ գքանզի Տէրոջը առջեւ Մաս-
փա չելլող մարդուն համար մեծ
երդում ըրեր էին, ըսելով թէ՝ Ա-
նիկայ անպատճառ պիտի մեռնի։

գ Գւ․ Ե․ 23։

6 Ու ատենը Իսրայէլի որդիքը՝ իրենց
եղբօրը Բենիամինին համար ցաւե-
լով ըսին․ Այսօր Իսրայէլէն մէկ
7 ցեղ մը բնաջինջ եղաւ։ Աս մնա-
ցածներուն ի՞նչ ընենք, որ անոնց
կնիկներ տանինք․ քանզի մենք Տէ-
րոջը անունովը երդում ըրինք՝ որ
մեր աղջիկներէն անոնց կնիկ չտանք։
8 Ու ըսին․ Իսրայէլի ցեղերէն ո՞վ է
որ Տէրոջը առջեւը Մասփա չելաւ․
և ահա դ Գաղաադու Յաբիսէն՝

դ ա Թագ․ ԺԱ․ 1։ ԼԱ․ 11։

բնաւ մարդ մը եկած չէր բանակը
9 [illegible] ժողովքը։ Ու ժողովուրդը աչքէ
անցուցին․ և ահա անոնց մէջը
Գաղաադու Յաբիսի բնակիչներէն
10 մարդ մը չգտնուեցաւ։ Ան ատե-
նը ժողովքը՝ խիստ զօրաւորներէն
հոն տասուերկու հազար մարդ խրը-
կեցին, ու անոնց պատուիրելով՝ ը-
սին․ եԳացէք, և Գաղաադու Յա-
բիսին բնակիչները սուրի բերնէ
անցուցէ՛ք, կնիկներն ալ ու տղաք-

ե Հմր 5։ Գւ․ Ե․ 23։ ա Թագ․ ԺԱ․ 7։

11 ներն ալ։ Եւ ձեր ընելու բանը
աս է․ զամէն էրիկ մարդը՝ ու էրիկ
մարդու անկողինը գիտցող ամէն

զ Թու․ ԼԱ․ 17։

12 կնիկը կորսնցուցէ՛ք։ Եւ Գաղա-
ադու Յաբիսի բնակիչներուն մէջը
չորս հարիւր կոյս աղջիկներ գը-
տան, որ անոնք արուի հետ պառ-
կած չէին, ու էրիկ մարդ չէին գի-
տեր, և զանոնք Քանանու երկրին
13 մէջ էՍելովի բանակը բերին։ Ու

է Յես․ ԺԸ․ 1։

բոլոր ժողովքը մարդ խրկելով,
ըՌեմոնի վէմը եղող Բենիամինի

ը Գւ․ Ի․ 47։

որդւոցը խօսեցան, և թզանոնք խա-

թ Օր․ Ի․ 10։

14 ղաղութեան հրաւիրեցին։ Ու ան
ատենը Բենիամինեանք դարձան․ և
անոնց ան կնիկները տուին, որ
Գաղաադու Յաբիսի կնիկներէն
ողջ թողուցեր էին․ բայց անոնց
15 բաւական չեղան։ Եւ ժողովուր-
դը ժԲենիամինի համար ցաւե-

ժ Հմր 6։

ցաւ․ քանզի Տէրը Իսրայէլի
ցեղերուն մէջ խրամատութիւն
ըրաւ։

Ն․ Ք․ ԶՔ․ ԻՐՐ 1406

16 Ու ժողովքին ծերերը ըսին․ Մը-
նացածներուն ի՞նչ ընենք՝ կնիկներ
[illegible] համար․ որովհետեւ Բենիա-
մինի ցեղին կնիկները կորսուեցան։
17 Եւ ըսին․ Ողջ մնացող Բենիամի-
նեանց ժառանգութիւն [illegible];
որ Իսրայէլէն ցեղ մը բնաջինջ չըլ-
18 լայ։ Ու մենք անոնց՝ մեր աղջիկնե-
րէն կնիկ չենք կրնար տալ․ ժքան-
զի Իսրայէլի որդիքը երդում ընե-

ժ Հմր 1։ Գւ․ ԺԱ․ 35։

լով ըսին թէ՝ Բենիամինի կնիկ
19 տուողը անիծեալ ըլլայ։ Եւ ը-
սին․ Ահա տարուէ տարի Տէրոջը
տօնախմբութիւն կ'ըլլայ Սելովի
մէջ, ան տեղը՝ որ Բեթելի հիւ-
սիսային կողմը, ու Բեթելէն Սիւ-
քէմը ելլող ճամբուն արեւելեան
կողմը, և Ղեբոնային հարաւային
20 կողմը կ'իյնայ։ Ու Բենիամինի
որդւոցը պատուիրելով՝ ըսին․ Գա-
ցէք՝ այգիներուն մէջը պահուե-
21 ցէ՛ք․ Ու երբոր տեսնէք որ Սելովի
աղջիկները ԺԱպար բռնելով խաղա-
լու ելեր են, ան ատենը այգիներէն

ԺԱ Տես Եւ․ ԺԵ․ 20։ Գւ․ ԺԱ․ 34։ ա Թագ․ ԺԸ․ 6։ Երեմ․ ԼԱ․ 13։

ելէ՛ք, և ամէն մէկերնիդ Սելովի
աղջիկներէն ձեզի մէյմէկ կնիկ
յափշտակեցէք, ու Բենիամինի եր-
22 կիրը գացէք։ Եւ թէ որ անոնց
հայրերը կամ եղբայրները մեզի գա-
լով՝ գանգատ ընեն, անոնց կ'ըսենք
թէ՝ Մեր սիրոյն համար շնորհք
ըրէք անոնց․ քանզի մենք պատե-
րազմին մէջը՝ անոնց ամենուն մէյ-
մէկ կնիկ չպահեցինք․ ու հիմա
դուք չտուիք անոնց, որ յանցաւոր
23 ըլլաք։ Եւ Բենիամինի որդիքը
անանկ ըրին, ու իրենց թուոյն
չափ՝ պար բռնողներէն կնիկներ
յափշտակելով՝ առին ու գացին ի-
րենց ժառանգութիւնը դարձան,
ու ԺԲքաղաքները շինեցին, և անոնց

ԺԲ Տես ՂԼ․ Ի․ 48։

24 մէջը բնակեցան։ Ու ան ատենը
Իսրայէլի որդիքը՝ անկէ ամէն մարդ
իր ցեղին ու իր ազգատոհմին գնաց․

ԺԳ Գւ․ ԺԷ․ 6։ ԺԸ․ 1։ ԺԹ․ 1։

և ամէն մարդ անկէ իր ժառանգու-
25 թեանը ելաւ։ ԺԳԱն օրերը Իսրայէլի
մէջ թագաւոր չկար․ ԺԴամէն մարդ
իր աչքին հաճելի եղածը կ'ընէր։

ԺԴ Օր․ ԺԲ․ 8։ Գւ․ ԺԷ․ 6։

# ԳԻՐՔ ՀՌՈՒԹԱՅ

## ԳԼՈՒԽ Ա

1 Եղիմելէք սովի պատճառով Մովաբացւոց երկիրը կ'երթայ, ու հոն կը մեռնի ։ 4 Մաալոն և Քելլոն՝ Մովաբացի կնիկներ կ'առնեն իրենց, ու կը մեռնին ։ 6 Նոեմի իր քաղաքը դառնալու ատենը՝ 8 իր հարսերը կը յորդորէ որ իր հետը չերթան ։ 14 Որփա անկէ կը զատուի, բայց Հռութ հաստատուն մտքով կ'ընկերանայ անոր ․ 19 որոնք երկուքնին ալ Բեթլէհէմ հասնելով՝ սիրով կ'ընդունուին ։

1 [ա]Դատաւորաց կառավարութեան
օրերը՝ [բ]երկրին վրայ սով ե-
ղաւ ․ և [գ]Յուդայի Բեթլէհէմէն մէկ
մարդ մը՝ իր կնիկովը ու երկու որ-
դիներովը Մովաբի երկիրը պանդխ-
2 տանալու գնաց ․ Եւ ան մարդուն
անունը՝ Եղիմելէք , ու կնկանը
անունը՝ Նոեմի , ու երկու որդւոցը
անունները՝ Մաալոն ու Քելլոն
էին ․ անոնք [դ]Եփրաթացի էին՝
Յուդայի Բեթլէհէմէն , և [ե]Մո-
վաբի երկիրը գացին , ու հոն բնա-
3 կեցան ։ Եւ Նոեմիին էրիկը Եղի-
մելէք մեռաւ ․ ու անիկայ իր երկու
4 որդիներովը մնաց , Որոնք իրենց
Մովաբացի կնիկներ առին ․ մէկուն
անունը՝ Որփա , ու մէկալին անու-
նը՝ Հռութ էր ․ և անոնք հոն
5 տասը տարիի չափ նստան ։ Ու
Մաալոնը և Քելլոնը՝ երկուքն ալ
մեռան ․ և կնիկը՝ իր երկու որդւոց-
մէն ու էրիկէն զուրկ մնաց ։
6 Եւ անիկայ իր երկու հարսերովը
ելաւ , որ Մովաբի երկրէն դառ-
նայ ․ քանզի Մովաբի երկրին մէջը
լսեր էր որ Տէրը [զ]իր ժողովուրդին
այցելութիւն ըրեր է՝ [է]անոնց հաց
7 տալով ։ Ու անիկայ իր եղած տե-
ղէն՝ իր երկու հարսերուն հետը
ելաւ ․ և Յուդայի երկիրը դառնա-
լու համար ճամբորդութիւն կ'ը-
8 նէին ։ Ու Նոեմի իր երկու հար-
սերուն ըսաւ ․ [ը]Գացէ՛ք , և ամէն
մէկերնիդ թող իր մօրը տունը
դառնայ ․ [թ]Տէրը ձեզի ողորմու-
թիւն ընէ , ինչպէս որ դուք [ժ]մե-
9 ռածներուն ու ինծի ըրիք ․ Տէրը
ձեզի տայ , որ ամէն մէկերնիդ իր
էրկանը տունը [ի]հանգստութիւն
գտնէ ․ ու զանոնք համբուրեց ․ և
անոնք ձայներնին վերցնելով՝ լա-
10 ցին ․ Ու անոր ըսին ․ Մենք ան-
պատճառ քու հետդ քու ժողովուր-
11 դիդ կը դառնանք ։ Բայց Նոեմի
ըսաւ ․ Ո՛վ իմ աղջիկներս՝ ետ
դարձէք ․ ինչո՞ւ համար իմ հետս
պիտի երթաք ․ միթէ իմ արգան-
դիս մէջը ուրիշ տղաքներ կա՞ն , Որ
12 ձեզի էրիկ ըլլան ․ Ետ դարձէ՛ք
իմ աղջիկներս , ետ գացէ՛ք ․ քանզի
ես պառաւեր եմ , ու նորէն պիտի
չկարգուիմ ․ Թէ որ յոյս ունիմ
ըսելով՝ աս գիշեր կարգուելու ըլ-
լայի , ու տղաքներ ալ ծնանէի ,
13 Դուք՝ մինչև անոնց մեծնալը պիտի
սպասէի՞ք , և դուք անոր համար
պիտի չկարգուէիք՝ ու առա՞նց պի-
տի մնայիք ․ չէ աղջիկներս , քան-
զի * ձեզի համար շատ՝ կը ցաւիմ ․
որովհետև [խ]Տէրոջը ձեռքը իմ վը-
14 րաս † ծանրացաւ ։ Ու անոնք նո-
րէն ձայներնին վերցնելով՝ լացին ։
Եւ Որփա իր կեսուրը համբուրեց ․
բայց Հռութ անկէ [ծ]չզատուեցաւ ։
15 Սակայն Նոեմի ըսաւ ․ Ահա քու
ներդ՝ իր ժողովուրդին ու իր [կ]աս-
տուածներուն դարձաւ ․ [կ]Դուն ալ
16 ներոջդ ետևէն ետ դարձիր ։ Եւ
Հռութ ըսաւ ․ [յ]Իմ վրաս մի՛ իյ-
նար որ քեզ թողում , ու քեզմէ
հեռանամ ․ քանզի ուր որ երթաս ,
հոն պիտի երթամ , և ուր որ մնաս ,
հոն պիտի մնամ ․ [ն]Քու ժողովուրդդ՝
իմ ժողովուրդս ըլլայ , ու քու
Աստուածդ՝ իմ Աստուածս ըլլայ ․
17 Ո՛ւր որ մեռնիս , ես ալ հոն պիտի
մեռնիմ , ու հոն թաղուիմ ․ [ձ]Տէ-
րը ինծի այսպէս՝ ու ասկէ աւելի
ընէ , թէ որ զիս քեզմէ՝ մահուանէ
18 ուրիշ բան մը զատէ ։ [ղ]Երբոր Նոե-
մի տեսաւ որ անիկայ միտքը դրեր է
իր հետը գալու , ալ չխօսեցաւ ա-
նոր ։
19 Ու երկուքը մէկտեղ գացին , մին-
չև որ Բեթլէհէմ հասան ․ ու երբ-
որ Բեթլէհէմ մտան , [ճ]անոնց
պատճառովը բոլոր քաղաքը շար-
ժեցաւ , ու կ'ըսէին ․ [ն]Արդեօք
20 Նոեմին ասիկա՞ է ։ Եւ անիկայ
անոնց ըսաւ ․ Զիս ‡Նոեմի մի՛
կանչէք , զիս ‖Մարա կանչեցէք ․
քանզի Ամենակարողը դառնու-
21 թեամբ լեցուց զիս ․ Ես լեցուն
գացի , [շ]ու Տէրը զիս պարապ դար-
ձուց ․ ինչո՞ւ զիս Նոեմի կը կանչէք ․

Ն․ Ք․ ԴՔ․ Իրր 1322

ա Դատ․ բ․ 16 ։
բ Տես Ծն․ ժբ․ 10 ։ իզ․ 1 ։ Դ Թագ․ ը․ 1 ։
գ Դատ․ ժէ․ 8 ։
դ Տես Ծն․ լե․ 19 ։
ե Դատ․ գ․ 30 ։

Իրր 1312

զ Ել․ դ․ 31 ։ Ղու․ ա․ 68 ։
է Սաղ․ ճլ․ 15 ։ Մատ․ զ․ 11 ։
ը Տես Յես․ իդ․ 15 ։
թ Բ Տիմ․ ա․ 16, 17, 18 ։
ժ Հմր 5 ։ Գլ․ բ․ 20 ։
ի Գլ․ գ․ 1 ։

Ն․ Ք․ ԴՔ․ Իրր 1312

լ Ծն․ լը․ 11 ։ Բ Օր․ իե․ 5 ։
* Կամ՝ ձեզմէ աւելի
խ Դատ․ բ․ 15 ։ Յոբ․ ժթ․ 21 ։ Սաղ․ լը․ 4 ։ լը․ 2 ։ լթ․ 9, 10 ։
† Եբր․ ելաւ ։
ծ Առակ․ ժէ․ 17 ։ ժը․ 24 ։
կ Դատ․ ժա․ 24 ։
հ Տես Յես․ իդ․ 15, 19 ։ Դ Թագ․ բ․ 2 ։ Ղու․ իդ․ 28 ։
յ Դ Թագ․ բ․ 2, 4, 6 ։
ն Գլ․ բ․ 11, 12 ։
ձ Ա Թագ․ գ․ 17 ։ իե․ 22 ։ Բ Թագ․ ժթ․ 13 ։ Դ Թագ․ զ․ 31 ։
ղ Գոր․ իա․ 14 ։
ճ Մատ․ իա․ 10 ։
ն Տես Ես․ իգ․ 7 ։ Ողբ․ բ․ 15 ։
‡ Այ՝ հաճելի ։
‖ Այ՝ դառն ։
շ Տես Յոբ․ ա․ 21 ։

Ն. Ք. ՂՔ. ԻՐՐ 1312

* Կամ՝ զիս խոնարհեցուց ։ ¤ Ել. Թ. 31, 32 ։ Գէ. Ր. 23 ։ Բ Թագ. Իա. 9 ։

քանզի Տէրը *ինծի դէմ վկայու-
թիւն տուաւ", ու Ամենակարողը
22 զիս վշտացուց ։ Այսպէս Նոեմի՝
իր հարսին Մովաբացի Հռութին
հետ՝ Մովաբի երկրէն ետ դարձաւ.
ու ¤գարիի հնձոց սկիզբը Բեթլէ-
հէմ հասան ։

## ԳԼ. Բ

1 Հռութ հասկ կը ժողվէ Բոոսին արտերէն ։ 4 Բոոս իմանալով անոր ո՛վ ըլլալը՝ 8 մարդասիրութիւն կը ցուցընէ անոր ։ 18 Եւ Հռութ իր բոլոր ժողվածը Նոեմիին կը տանի ։

– Գէ. Գ. 2, 12 ։ Բ Գէ. Գ. 21 ։ Մատ. Ա. 5 ։ Գ Ղև. ԺԹ. 9 ։ Բ Օր. Իդ. 19 ։

1 Նոեմին իր էրկանը կողմանէ
մէկ –ազգական մը ունէր. անի-
կայ Եղիմելէքին ազգատոհմէն էր,
ու շատ հարուստ մարդ մըն էր, և
2 անոր անունը Բ Բոոս էր ։ Ու Մո-
վաբացի Հռութը Նոեմիին ըսաւ.
Արտերը երթամ, և որու՛ն աչքին
առջևը ողորմութիւն գտնելու ըլ-
լամ, անոր ետևէն Գ հասկեր ժողվեմ ։ Եւ անիկայ ըսաւ
3 անոր. Գնա՛ աղջիկս ։ Ու անիկայ
գնաց. և արտի մը մէջ մտնելով՝
հնձողներուն ետևէն հասկ կը ժողվէր.
ու այնպէս պատահեցաւ՝ որ անի-
կայ Եղիմելէքին ազգատոհմէն եղող
Բոոսին արտին մէջը գտնուեցաւ ։
4 Եւ ահա Բոոս Բեթլէհեմէն ե-
կաւ, ու հնձողներուն ըսաւ. Դ Տէ-
րը ձեր հետը ըլլայ ։ Եւ անոնք ը-
5 սին. Տէրը քեզ օրհնէ ։ Ու Բոոս՝
հնձողներուն վրայ կեցող իր ման-
չուն ըսաւ. Աս աղջիկը որո՞ւնն է ։
6 Եւ հնձողներուն վերակացու մանչը
պատասխան տուաւ ու ըսաւ.
Ե Նոեմիին հետ Մովաբի երկրէն
7 դարձող Մովաբացի աղջիկն է. Եւ
ինծի ըսաւ. Կ՛աղաչեմ, որաներուն
մէջը հնձողներուն ետևէն հասկ քա-
ղեմ ու ժողվեմ. ու անիկայ առ-
տուանց կանուխ եկաւ. ու մինչև
հիմա կեցաւ, միայն քիչ հիմա քիչ մը
տունը նստաւ ։

Դ Սաղ. ՃԻԹ. 7, 8 ։ Ղու. Ա. 28 ։ Բ Թես. Գ. 16 ։ Ե Գէ. Ա. 22 ։

8 Եւ Բոոս ըսաւ Հռութին. Մը-
տիկ ըրէ՝ աղջիկս. հասկ ժողվելու
համար՝ ուրիշին արտը չերթաս, ու
աս տեղէն ալ չզատուիս, հապա
հոս իմ աղջիկներուս քովը կենաս ։
9 Քու աչքերդ անոնց հնձած արտին
վրայ ըլլան, ու անոնց ետևէն գնա.
ահա մանչերուն ապսպրեր եմ որ
քեզի չդպչին. ու երբոր ծարւիս,
ամաններուն քովը գնա, ու մանչե-
10 րուն քաշած ջուրէն խմէ ։ Եւ ա-
ջէկը գետնի վրայ ինկաւ. ու գետ-
նէն երկրպագութիւն ընելով՝ անոր
ըսաւ. Ինչո՞ւն է որ ես քու աչքե-
րուդ առջևը շնորհք կը գտնեմ. ու
դուն ինծի հետ ծանօթութիւն
կ՚ընես. որովհետև ես մէկ օտար կը-
11 նիկ մըն եմ ։ Եւ Բոոս պատասխան

Զ Ա Թագ. Իե. 23 ։

տուաւ, ու անոր ըսաւ. Քու էր-
կանդ մեռնելէն ետքը՝ Է դուն քու
կեսուրիդ ինչ որ ըրիր, բոլորն ալ
պատմեցին ինծի. և թէ ինչպէս
քու հայրդ ու մայրդ և ծնած եր-
կիրդ թողուցիր, ու եկար ան ժո-
ղովուրդին՝ որն որ առաջուց չէիր
12 ճանչնար ։ Ը Քու գործքիդ փոխա-
րէն Տէրը հատուցում ընէ, և քու
վարձքդ Իսրայէլի Տէր Աստուծոյն
կողմանէ առատապէս տրուի.
քանզի դուն եկար որ Թ անոր թե-
ւերուն տակը ապաստանարան մը
13 գտնես ։ Ու անիկայ ըսաւ. Ո՛վ
Տէր իմ, Ժ քու աչքերուդ առջևը
շնորհք գտնեմ. քանզի դուն զիս
մխիթարեցիր, ու քու աղախինիդ
Ի քաղցրութեամբ խօսեցար, նթէ-
պէտև ես քու աղախիններուդ մէ-
14 կուն պէս ալ չեմ ։ Եւ Բոոս կե-
րակուրի ատենը անոր ըսաւ. Հոս
եկուր. ու հացէն կե՛ր, և պատառդ
քացախին մէջը թաթխէ ։ Ուստի
անիկայ հնձողներուն քովը նստաւ.
ու անոր՝ բոհրած ցորեն տուաւ.
ան ալ կերաւ կշտացաւ, և Լ աւել-
15 ցածը պահեց ։ Ու երբոր հասկ
ժողվելու ելաւ, Բոոս իր մանչե-
րուն պատուիրելով՝ ըսաւ. Թող
որաներուն մէջէն ալ ժողվէ. ու
16 զանիկայ մի՛ ամչցընէք. Եւ խուր-
ձերէն ալ անոր համար գետինը ձը-
գեցէք. ու թո՛ղ տուէք որ ժող-
վէ. և զանիկայ մի՛ յանդիմանէք ։
17 Ու անիկայ՝ մինչև իրիկուն ան ար-
տին մէջը հաւլով՝ հասկեր ժողվեց.
ու երբոր ժողվածը ծեծեց, մէկ ար-
18 դուի չափ գարի եղաւ ։ Եւ զանի-
կայ առաւ. ու քաղաքը մտաւ.
և կեսուրը անոր ժողվածը տեսաւ.
ու Հռութ հանեց ծ ան իր կշտացա-
ծէն աւելցածը անոր տուաւ ։
19 Եւ կեսուրը անոր ըսաւ. Այսօր
ո՞ւսկից հասկ ժողվեցիր, և ո՞ւր բա-
նեցար. Կ քեզի ճանչցողութիւն ը-
նողը օրհնեա՛լ ըլլայ ։ Ան ատենը
անիկայ իր կեսուրին իմացուց թէ
որուն քովը բաներ է. ու ըսաւ.
Ան մարդը՝ որուն քովը ես այսօր
20 բանեցայ, Բոոս կը կոչուի ։ Եւ
Նոեմի իր հարսին ըսաւ. Հ Անիկայ
Տէրոջմէն օրհնեա՛լ ըլլայ. որ Ձ կեն-
դանիներէն ու մեռածներէն իր ո-
ղորմութիւնը չկտրեց. և Նոեմի ա-
նոր ըսաւ. Ան մարդը մեր ազգա-
տոհմէն է. անիկայ Ղ մօտ ազգական
21 է մեզի ։ Ու Մովաբացի Հռութը
ըսաւ. Անիկայ նաև ինծի ըսաւ
թէ՝ Իմ մանչերուս քովէն չզա-
տուիս, մինչև որ անոնք իմ բոլոր
22 հունձքս լմնցընեն ։ Եւ Նոեմի իր
հարսին՝ Հռութին ըսաւ. Աղէկ
է՝ աղջիկս, որ դուն անոր աղջիկ-

Ն. Ք. ՂՔ. ԻՐՐ 1312

Է Գէ. Ա. 14, 16, 17 ։ Ը Ա Թագ. Իդ. 19 ։ Թ Գէ. Ա. 16 ։ Սաղ. ԺԷ. 8 ։ ԼԳ. 7 ։ ԾԷ. 1 ։ ԿԳ. 7 ։ Ժ Ծն. ԼԳ. 15 ։ Ա Թագ. Ա. 18 ։ Ի Ծն. ԼԴ. 3 ։ Դատ. ԺԹ. 3 ։ Լ Ա Թագ. Իե. 41 ։ Խ Հմր 18 ։ Ծ Տես Հմր 14 ։ Կ Հմր 10 ։ Սաղ. ԽԱ. 1 ։ Հ Գէ. Գ. 10 ։ Բ Թագ. Բ. 5 ։ Յոբ. ԻԹ. 13 ։ Ձ Առակ. ԺԷ. 17 ։ Ղ Գէ. Գ. 9 ։ Դ. 6 ։ Ղև. Իե. 25 ։

Ն. Ք. ԶՓ. իրր 1312

ներուն հետը ելլես, ու քեզ ու-
23 րիշ արտի մը մէջ չտեսնեն ։ Եւ
անիկայ Բոոսին աղջիկներէն չզա-
տուեցաւ. ու մինչեւ գարիին հնձոցը
և ցորենին հնձոցը լմննալը՝ հասկ
ժողվեց ; ու իր կեսուրին քովը կը
բնակէր ։

ԳԼ. Գ

1 Նոեմիին խրատովը 3 Հռութ Բոոսին ոտքերուն քովը կը պառկի ։ 8 Բոոս ազգականութեան իրաւունքը կը խոստովանի ։ 14 ու վեց չափ գարի տալով զանիկայ տուն կը ղրկէ ։

1 Եւ անոր կեսուրը Նոեմին անոր
ըսաւ. Աղջիկս, քեզի [ա]հանգըս-
տութիւն [բ]չփնտռե՞մ, որ քեզի
2 աղէկ ըլլայ ։ Հիմա Բոոսը մեր ազ-
գականը չէ՞, որ դուն [գ]անոր աղ-
ջիկներուն քովը կեցար. ահա անի-
կայ աս գիշեր կալին մէջը գարին կը
3 հոսէ ։ Եւ դուն լուացուէ, [դ]ու
եղով օծուէ, և լաթերդ հագիր,
ու կալը իջիր. և մինչեւ որ ուտելը
ու խմելը չլմնցընէ, ան մարդուն
4 մի՛ յայտնուիր ։ Ու երբոր քնա-
նայ, անոր պառկած տեղը իմացիր,
և գնա անոր ոտքերուն կողմէն ծած-
կոցը բա՛ց՝ ու պառկէ, և անիկայ
քեզի պիտի իմացընէ թէ ինչ ընե-
5 լու ես ։ Ու Հռութ անոր ըսաւ.
Ամէն ինծի ապսպրածներդ պիտի
ընեմ ։
6 Եւ կալը իջաւ, ու կեսուրին ա-
7 մէն ապսպրածին պէս ըրաւ ։ Եւ
Բոոս՝ ուտելէն, խմելէն, ու [ե]սիր-
տը զուարճանալէն ետքը՝ դիզուած
ցորենին եզերքը պառկելու գնաց. և
Հռութ ալ կամացուկ մը գնաց,
ու անոր ոտքերուն կողմէն ծածկո-
8 ցը բացաւ, և պառկեցաւ ։ Ու կէս
գիշերուն մարդը վախցաւ, ու ծը-
ռելով տեսաւ որ՝ ահա իր ոտքե-
րուն քովը կնիկ մը պառկեր էր ։
9 Եւ ըսաւ. Դուն ո՞վ ես ։ Ու անի-
կայ ըսաւ. Ես քու աղախինդ Հը-
ռութն եմ. [զ]Ու քու քղանցքդ քու
աղախնոյդ վրայ տարածէ. քանզի
10 դուն [է]մօտ ազգական ես ։ Ան ալ
ըսաւ. [ը]Դուն Տէրոջմէն օրհնեալ
ըլլաս՝ աղջիկս. քու ետքի աղէկու-
թիւնդ [թ]առջինէն մեծ է. որով-
հետեւ աղքատ կամ հարուստ երի-
տասարդներուն ետեւէն չգացիր ։
11 Եւ հիմա ով աղջիկս՝ մի՛ վախնար,
դուն ինծի ինչ որ ըսես, քեզի պի-
տի ընեմ. քանզի իմ *քաղաքիս
բոլոր ժողովուրդը՝ գիտէ որ դուն
12 [ժ]առաքինի կնիկ մըն ես ։ Ու հիմա
իրաւցընէ ես [ի]մօտ ազգականդ եմ.
բայց [լ]ինծմէ մօտ [խ]ուրիշ ազգական
13 ալ կայ ։ Աս գիշեր հոս կեցիր, ու
թէ որ անիկայ [խ]առաւօտուն իր
ազգականութեան պարտաւորու-
թիւնը քեզի հատուցանել ուզէ,
աղէ՛կ, թող հատուցանէ՛. բայց
թէ որ անիկայ ազգականութեան
պարտաւորութիւնը քեզի հատու-
ցանել չուզէ, ան ատենը ես կը
հատուցանեմ, [ծ]կենդանի է Տէր.
մինչեւ առաւօտ հոս պառկէ ։
14 Ուստի մինչեւ առաւօտ անոր ոտ-
քերուն քովը պառկեցաւ. ու ժա-
ռուն, երբոր մարդիկ դեռ չէին
կրնար միմեանց ճանչնալ, ելաւ. և
Բոոս ըսաւ. [կ]Մարդ չգիտնայ որ
15 կալին մէջը կնիկ մտեր է ։ Նաեւ
ըսաւ. Վրայի ծածկոցդ բեր, ու
զանիկայ բռնէ՛ ։ Եւ Հռութ զա-
նիկայ բռնեց. ու անոր վեց չափ
գարի չափեց, ու անոր վրայ բեռ-
նաւորեց. և անիկայ քաղաքը գը-
16 նաց ։ Ու Հռութ իր կեսուրին
դարձաւ, որ անոր ըսաւ. Ո՛վ աղ-
ջիկս՝ †ինչպէ՞ս ես. ու անիկայ անոր
պատմեց ինչ որ ան մարդը ըրաւ
17 իրեն. Եւ ըսաւ. Ինծի աս վեց
չափ գարին տուաւ, ըսելով. Քու
18 կեսուրիդ պարապ չերթաս ։ Եւ
Նոեմի ըսաւ. [հ]Աղջիկս՝ նստէ, մին-
չեւ որ գիտնաս թէ աս գործը ինչ-
պէս պիտի լմննայ. քանզի ան
մարդը մինչեւ որ աս գործը այսօր
չլմնցընէ, չհանգստանար ։

ԳԼ. Դ

1 Բոոս դատաստանի կը կանչէ Եղիմելէքին ամենէն մօտ ազգականը ։ 6 Իսկ անիկայ Իսրայէլի մէջ եղած սովորութեան համեմատ՝ ազգականութեան իրաւունքը կատարելը կը մերժէ ։ 9 Բոոս կը փրկէ մեռնողին ժառանգութիւնը, 11 ու իրեն կնիկ կ՚առնէ Հռութը, որ Դաւիթին մեծ հայրը Ովբէդը կը ծնանի ։ 18 Փարեսին ազգաբանութիւնը ։

1 Եւ Բոոս դուռը ելաւ, ու հոն
նստաւ. և ահա [ա]ան Բոոսին ը-
սած ազգականը կ՚անցնէր. ու
Բոոս անունովը կանչեց զանիկայ,
ու ըսաւ. Եկուր՝ հոս նստէ. և
2 անիկայ դարձաւ ու նստաւ ։ Ան
ատենը անիկայ [բ]քաղաքին ծերերէն
տասը մարդ առաւ, ու անոնց ըսաւ.
Աս տեղս նստեցէ՛ք. և անոնք նըս-
3 տան ։ Ետքը ան ազգականին ը-
սաւ. Մովաբի երկրէն դարձող
Նոեմին՝ մեր եղբօրը Եղիմելէքին
արտին բաժինը ծախելու վրայ է.
4 Ու ես մտածեցի որ քեզի իմացը-
նեմ, ու ըսեմ. [գ]Զանիկայ, աս
նստողներուն առջեւը ու իմ ժողո-
վուրդիս ծերերուն առջեւը [դ]ծախու
առ. թէ որ ազգականութեան ի-
րաւունքով զանիկայ ծախու առ-
նել կ՚ուզես, ծախու առ. բայց թէ
որ ծախու առնել չես ուզեր, ինծի
իմացուր որ գիտնամ. [ե]քանզի
քեզմէ 'ի զատ ազգականութեան
իրաւունքը կատարելու մէկը չկայ,

ա Գլ. ա. 9 ։
բ ա Կոր. է. 36 ։ ա Տիմ. ե. 8 ։
գ Գլ. բ. 8 ։
դ բ Թագ. ժդ. 2 ։
ե Դատ. ժթ. 6. 9. 22 ։ բ Թագ. ժգ. 28 ։ Եսթ. ա. 10 ։
զ Եզեկ. ժզ. 8 ։
է Գլ. բ. 20 ։ Հմր 12 ։
ը Գլ. բ. 20 ։
թ Գլ. ա. 8 ։
* Եբր. դռան. ժողովուրդիս բոլոր դուռը
ժ Առակ. ժբ. 4 ։
ի Հմր 9 ։
լ Գլ. դ. 1 ։
խ բ Օր. իե. 5 ։ Գլ. դ. 5 ։ Մատ. իբ. 24 ։

ծ Դատ. ը. 19 ։ Երեմ. դ. 2 ։
կ Հռով. ժբ. 17 ։ ժդ. 16 ։ ա Կոր. ժ. 32 ։ բ Կոր. ը. 21 ։ ա Թես. ե. 22 ։
† Կամ՝ ով
հ Սաղ. լէ. 3. 5 ։
ա Գլ. գ. 12 ։
բ Գ Թագ. իա. 8 ։ Առակ. լա. 23 ։
գ Ծն. իգ. 18 ։
դ Երեմ. լբ. 7. 8 ։
ե Ղև. իե. 25 ։

Ն · Ք · ԴՔ · իրր 1312

ղ Ծն · լը · Տ ։ ր Օր · իե · 5 · 6 ։ Գւ · գ · 13 · Մատ · իբ · 24 ։
ե Գւ · գ · 12 · 13 ։
ը ր Օր · իե · 7 · 9 ։
թ ր Օր · իե · 6 ։

ու քեզմէ ետքը ես եմ ։ Եւ անի-
կայ ըսաւ . Ես ազգականութեան
5 իրաւունքը կը կատարեմ ։ Ու Բոոս
ըսաւ . Դուն Նոեմիին ձեռքէն ար-
տը ծախու առած օրդ՝ մեռնողին
կնիկէն՝ Մովաբացի Հռութէն ալ
ծախու առնելու ես , [ղ]որ մեռնողին
անունը պահես իր ժառանգու-
6 թեանը մէջ ։ [ե]Եւ ազգականը ըսաւ .
Ես իմ ազգականութեանս իրա-
ւունքը չեմ կրնար կատարել , չըլ-
լայ որ իմ ժառանգութիւնս աւ-
րեմ . իմ ունեցած ազգականու-
թեանս իրաւունքը դուն կատարէ .
քանզի ես չեմ կրնար կատարել ։
7 ( [ը]Ու Իսրայէլի մէջ առաջուց աս
սովորութիւնը կար փրկելու ու ծա-
խու առնելու գործքերուն մէջ՝ ա-
մէն բան հաստատելու համար .
մարդը իր կօշիկը կը հանէր , ու իր
ընկերին կու տար . և ասիկայ Իս-
րայէլի մէջ վկայութիւն կ՚ըլլար ։ )
8 Ուստի ազգականը Բոոսին ըսաւ .
Դուն ծախու առ . ու իր կօշիկը
հանեց ։
9 Եւ Բոոս ծերերուն ու բոլոր ժո-
ղովուրդին ըսաւ . Դուք այսօր վը-
կայ էք , որ ես Եղիմելէքին բոլոր
ստացուածքը , ու Քելոնին և Մա-
ալոնին բոլոր ստացուածքը՝ Նոե-
10 միին ձեռքէն ծախու առի . Ու Մա-
ալոնին կնիկը՝ Մովաբացի Հռութն
ալ ինծի կնիկ առի , որ մեռնողին
անունը պահեմ իր ժառանգու-
թեանը մէջ , [թ]ու մեռնողին անու-
նը իր եղբայրներէն ու իր բնակա-
րանին դռնէն չվերնայ . դուք ասոր
11 համար այսօր վկայ էք ։ Ան
ատենը դուռը եղող բոլոր ժողո-
վուրդը ու ծերերը ըսին . Վկայ
ենք . [ժ]Տէրը քու տունդ մտնող
կնիկը Ռաքէլին ու Լիային պէս ը-
նէ , որ անոնց երկուքը [ի]Իսրայէլին
տունը շինեցին . և դուն [լ]Եփրա-
թայի մէջ ուժովցիր , ու Բեթլէ-
12 հեմի մէջ անուն վաստըկէ ։ Ու
քու տունդ Փարեսին տանը պէս
ըլլայ , [խ]որն որ Թամարը ծնաւ
Յուդային , [ծ]ան սերունդով՝ որ
Տէրը պիտի տայ քեզի աս նորա-
հասակ կնիկէն ։
13 Եւ Բոոս [կ]Հռութը առաւ , որ
իրեն կնիկ եղաւ , ու անոր մտաւ .
և [հ]Տէրոջը ողորմութեամբը յղա-
14 ցաւ , ու որդի մը ծնաւ ։ Եւ [ձ]կը-
նիկները Նոեմիին ըսին . Օրհնեալ
ըլլայ Տէրը , որ այսօր քեզ առանց
մօտ ազգականի չթողուց , որ անոր
15 անունը Իսրայէլի մէջ յիշուի . Ու
անիկայ քու հոգւոյդ մխիթարու-
թիւնը՝ և ծերութեանդ [ղ]դալա-
զանը ըլլայ . քանզի զանիկայ՝ քեզ
սիրող հարսդ ծնաւ , որ քեզի [ճ]եօ-
16 թը որդիէ աղէկ է ։ Ու Նոեմի՝
տղան առաւ , իր գիրկը դրաւ , և
17 անոր դայեակը եղաւ ։ [մ]Եւ դրացի
կնիկները անոր անուն դրին , ըսե-
լով . Նոեմիին որդի մը ծնաւ . և
անոր անունը Ովբէթ կոչեցին . ա-
սիկայ Դաւիթին հօրը Յեսսէին
հայրն էր ։
18 Ու Փարեսին ծնունդները ասոնք
19 են . [յ]Փարէս ծնաւ Եսրոնը , Ու
Եսրոն ծնաւ *Արամը , և Արամ [ն]
20 ծնաւ Ամինադաբը , Ու Ամինադաբ
ծնաւ [ն]Նաասոնը , և Նաասոն [շ]ծը-
21 նաւ Սաղմոնը , Ու Սաղմոն ծնաւ
22 Բոոսը , և Բոոս ծնաւ Ովբէդը , Ու
Ովբէդ ծնաւ Յեսսէն , և Յեսսէ
ծնաւ [ո]Դաւիթը ։

Ն · Ք · ԴՔ · իրր 1312

ժ Սաղ · ճիէ · 3 ։ ճիր · 3 ։
ի Օր · իե · 9 ։
լ Ծն · իե · 16 · 19 ։
խ Ծն · լը · 29 ։ ա Մն · բ · 4 ։ Մատ · ա · 3 ։
ծ ա Թագ · բ · 20 ։
կ Գւ · գ · 11 ։
հ Ծն · իթ · 31 ։ լգ · 5 ։
ձ Ղու · ա · 58 ։ Հռովմ · ժբ · 15 ։
ղ Ծն · խե · 11 ։ Սաղ · ձե · 22 ։
ճ ա Թագ · ա · 8 ։
մ Ղու · ա · 58 · 59 ։
յ ա Մն · բ · 4 · 5 ։ Մատ · ա · 3 ։
* կամ՝ Ռամը , և Ռամ
ն Թու · ա · 7 ։
շ Մատ · ա · 4 · 5 ։
ո ա Մն · բ · 15 ։ Մատ · ա · 6 ։

# *ԱՌԱՋԻՆ ԳԻՐՔ ԹԱԳԱՒՈՐԱՑ

## ԳԼՈՒԽ Ա

1 Եղկանա անունով Ղևտացի մը՝ որ երկու կընիկ ունէր, ամէն տարի Սելով կ'երթար Տէրոջը երկրպագութիւն ընելու ։ 4 Անիկայ իր Աննա կնիկը կը սիրէր, թէև ամուլ էր ։ 9 Աննա վշտացած սրտով տղայ մը կը խնդրէ Տէրոջմէն ։ 12 Իսկ Հեղի Նախ կը յանդիմանէ զանիկայ, ու ետքը կ'օրհնէ ։ 19 Աննա՝ Սամուէլը ծնանելէն ետև՝ տունը կը մնայ մինչև անոր կաթէ կտրուիլը. 24 և իր ըրած ուխտին պէս՝ Տէրոջը կը մատուցանէ զանիկայ ։

1 Ու Եփրեմի լեռնէն †Արիմաթեմ
սօփիմէն՝ ⁼Եղկանա անունով
ᵖԵփրաթացի մարդ մը կար, որ
Սուփիի որդւոյն Թովայի որդւոյն
Եղիուսի որդւոյն Ցերոամին որդին
2 էր ։ Եւ անիկայ երկու կնիկ ունէր. մէկուն անունը՝ Աննա, ու
մէկալին անունը՝ Փենանա էր. ու
Փենանան զաւակներ ունէր. բայց
3 Աննան զաւակ չունէր ։ Եւ այն
մարդը ᵠտարուէ տարի իր քաղաքէն կ'ելլէր, ᵗոր Սելովի մէջ զօրութեանց Տէրոջը ᵘերկրպագութիւն ու զոհ մատուցանէ. և հոն
Հեղիին երկու որդիքը՝ Ոփնի ու
Փենէհէս՝ Տէրոջը քահանաներն է-
4 ին ։ Ու Եղկանա ᵛիր զոհ մատուցած օրը՝ իր կնկանը Փենանային
և անոր տղաքներուն ու աղջիկնե-
5 րուն մէյմէկ բաժին տուաւ. Իսկ
Աննային ‡կրկին բաժին տուաւ,
քանզի անիկայ Աննան կը սիրէր.
ᵘբայց Տէրը անոր արգանդը գոցեր
6 էր ։ Ու անոր նախանձորդը Փենանա ᵉզանիկայ կսկծցընելու համար խիստ վշտացուց. որովհետև
Տէրը անոր արգանդը գոցեր էր ։
7 Եւ տարուէ տարի Տէրոջը տունը
ելած ատենը՝ Եղկանան այնպէս կ'ըներ. Փենանան ալ նոյնպէս Աննան
կը վշտացընէր. ու անիկայ կու-
8 լար, և չէր ուտեր ։ Ու էրիկը Եղկանան անոր ըսաւ. Աննա՝ ինչո՞ւ
կու լաս, և ինչո՞ւ չես ուտեր, ու
ինչո՞ւ համար սիրտդ այդչափ տըրտում է. ᶠմիթէ ես քեզի տասը
որդիէ լաւ չե՞մ ։
9 Եւ Աննա Սելովի մէջ ուտելէն
ու խմելէն ետքը՝ ոտք ելաւ. (Ու
Հեղի քահանան ᵈ Տէրոջը տաճարին
սեմոցը քովը աթոռի մը վրայ նստեր էր.) ᵋԵւ տրտմալից հոգւով
Տէրոջը առջևը աղօթք ըրաւ՝ ու
11 խիստ շատ լացաւ ։ Եւ ᵏուխտ ընելով՝ ըսաւ. Ո՛վ Տէր զօրութեանց, թէ որ ᵗքու աղախնոյդ
նեղութեանը նայիս, ու ᵒզիս յիշես, և քու աղախինդ չմոռնալով՝
քու աղախնոյդ ǁարու զաւակ մը
տաս, զանիկայ Տէրոջը պիտի նուիրեմ իր կենացը բոլոր օրերուն մէջը, ու ⌈անոր գլխուն վրայ ածելի
12 պիտի չելլէ ։ Ու երբոր անիկայ
Տէրոջը առջևը իր աղօթքը շատցուց, Հեղի անոր բերնին կը նայէր ։
13 Եւ աննա իր սրտին մէջէն կը խօսէր. միայն անոր շրթունքները կը
շարժէին, բայց ձայնը չէր լսուեր.
անոր համար Հեղի զանիկայ գինով
14 կարծեց ։ Եւ Հեղի անոր ըսաւ.
Մինչև ե՞րբ գինովութիւն պիտի ը-
15 նես. քու գինիէդ հրաժարէ ։ Եւ
Աննա պատասխան տուաւ՝ ու ըսաւ. Ո՛վ տէր իմ. այդպէս չէ.
ես վշտացած սրտով կնիկ մըն եմ,
և գինի կամ օղի չեմ խմած. սակայն ᶜՏէրոջը առջևը §իմ սիրտս
16 բացի ։ Քու աղախինդ ⁾չար կնիկ
մը մի՛ կարծեր. քանզի իմ վշտացս
ու նեղութեանս շատութեանը հա-
17 մար մինչև հիմա խօսեցայ ։ Ան ատենը Հեղի պատասխան տուաւ՝ ու
ըսաւ. ᶻԳնա խաղաղութեամբ, և
ᶠԻսրայէլին Աստուածը քու խնդրուածքդ քեզի տայ՝ ինչ որ անկէ
18 խնդրեցիր ։ Ու անիկայ ըսաւ.
ᶠՔու աղախինդ թող քու առջևդ
շնորհք գտնէ. և կնիկը ᵃիր ճամբան գնաց. ու կերաւ, ու երեսը
մէյմըն ալ չտրտմեցաւ ։
19 Եւ անոնք առաւօտուն կանուխ
ելան, ու Տէրոջը առջևը երկրպագութիւն ըրին, և Ռամա դարձան՝
ու իրենց տունը գացին ։ Ու Եղկանա իր Աննա կնկանը մօտեցաւ.
20 և ᵇՏէրը զանիկայ յիշեց ։ Ու Աննա
յղացաւ. և ժամանակը հասնելուն՝
տղայ մը ծնաւ, ու անոր անունը
‡Սամուէլ կոչեց՝ ըսելով. Քանզի
21 զանիկայ Տէրոջմէն խնդրեցի ։ Եւ
անոր էրիկը Եղկանան իր բոլոր ընտանիքովը ᶜՍելով ելաւ, որ Տէրոջը
առջևը տարեկան զոհը մատուցա-
22 նէ, ու իր ուխտը կատարէ ։ Բայց

Ն. Ք. ԳՔ. 
ԻԲՐ 1171

* Կամ Ա. ԹԱԳԱՒՈՐԱՑ ԳԻՐՔ ՍԱՄՈՒԷԼԻ

† Ո. Ե՝ Ռամա տես Հմր 19 ։
⁼ Ա Մն. Զ. 27. 34 ։
ᵖ Հռութ. Ա. 2 ։
ᵠ Ել. ԻԴ. 14 ։ Բ Օր. ԺԶ. 16 ։ Ղու. Բ. 41 ։
ᵗ Յես. ԺԸ. 1 ։
ᵘ Բ Օր. ԺԲ. 5. 6. 7 ։
ᵛ Բ Օր. ԺԲ. 17. 18 ։ ԺԶ. 11 ։
‡ Կամ՝ երեսէն
ᵘ Ծն. Լ. 2 ։
ᵉ Յոբ. ԻԴ. 21 ։
ᶠ Հռութ. Դ. 15 ։
ᵈ Գլ. Գ. 3 ։
ᵋ Յոբ. Է. 11 ։ Ժ. 1 ։ Բ Թագ. ԺԷ. 8 ։

Ն. Ք. ԳՔ. 
ԻԲՐ 1171

ᵏ Ծն. ԻԸ. 20 ։ Թուեր. Լ. 3 ։ Դատ. ԺԱ. 30 ։
ᵗ Ծն. ԻԹ. 32 ։ Ել. Դ. 31 ։ Բ Թագ. ԺԶ. 12 ։ Սաղ. ՃԵ. 18 ։
ᵒ Ծն. Ը. 1 ։ Լ. 22 ։
ǁ Եբր. մարդոց սերունդ
⌈ Թուեր. Զ. 5 ։ Դատ. ԺԳ. 5 ։
ᶜ Սաղ. ԿԲ. 8 ։ Ողբ. Բ. 2 ։
§ Եբր. իմ հոգիս թափեցի ։
⁾ Բ Օր. ԺԳ. 13 ։
ᶻ Դատ. ԺԸ. 6 ։ Մար. Ե. 34 ։ Ղու. Է. 50 ։ Ը. 48 ։
ᶠ Սաղ. Ի. 4, 5 ։
ᶠ Ծն. ԼԳ. 15 ։ Հռութ. Բ. 13 ։
ᵃ Ժող. Թ. 7 ։
ᵇ Ծն. Լ. 22 ։
‡ Այ՝ Աստուծոյ լսած ; կամ՝ Աստուծոյ անունը ։
ᶜ Հմր 3 ։

Աննա չգնաց, քանզի իր էրկանը ը-
սաւ. Մինչեւ տղուն կաթէ կըտ-
րուիլը կը նստիմ. ետքը զանիկայ
կը տանիմ, որ Տէրոջը առջեւը ե-
23 րեւնայ, ու միշտ հոն կենայ։ Եւ
Էլկանա էրիկը Եղկանան անոր ըսաւ. Աչ-
քերուդ հաճելի եղածը ըրէ. մինչեւ
որ զանիկայ կաթէն կտրես, նըս-
տէ. միայն թէ Տէրը իր խօսքը
հաստատէ. ուստի կնիկը նստաւ,
ու մինչեւ իր տղան կաթէն կտրելը՝
զանիկայ կը սնուցանէր։
24 Եւ զանիկայ կաթէն կտրածին
պէս՝ իր հետը առաւ, ու իրեք
զուարակով, մէկ արդու ալիւրով,
ու մէկ տիկ գինիով՝ զանիկայ Տէ-
րոջը տունը տարաւ, որ Սելովի մէջ
25 էր. ու տղան շատ պզտիկ էր։ Եւ
մէկ զուարակը մորթեցին, ու տը-
26 ղան Հեղիին տարին։ Եւ Աննա
ըսաւ. Ո՛վ տէր իմ, քու անձդ
կենդանի է. ես այն կնիկն եմ, որ
հոս քու քովդ կայնեցայ Տէրոջը
27 աղօթք ընելու համար. Ես աս
տղուն համար աղօթք ըրի, ու Տէ-
րը իմ խնդրուածքս ինծի տուաւ,
28 ինչ որ անկէ խնդրեցի։ Հիմա ես
ալ զանիկայ Տէրոջը փոխ կու տամ.
անիկայ իր բոլոր կենացը մէջ Տէ-
րոջը փոխ տրուած ըլլայ. ու անի-
կայ հոն Տէրոջը երկրպագութիւն
ըրաւ։

### ԳԼ. Բ

1 Աննային շնորհակալութեան երգը։ 12 Հեղիի որդւոցը մեղքը։ 18 Սամուէլին պաշտօնը։ 20 Հեղի օրհնութիւն կու տայ Աննային, որ ուրիշ զաւակներ ալ կը ծնանի։ 22 Հեղի իր որդիքը կը խրատէ։ 28 Հեղիին տանը վրայով մարգարէութիւն մը։

1 Եւ Աննա աղօթք ըրաւ, ու ը-
սաւ.
Իմ սիրտս Տէրոջմով ուրախա-
ցաւ. իմ եղջիւրս Տէրոջմով բարձ-
րացաւ. բերանս իմ թշնամիներուս
վրայ բացուեցաւ. քանզի քու
փրկութիւնովդ ուրախացայ։
2 Տէրոջը պէս սուրբ չկայ. քան-
զի քեզմէ ուրիշը չկայ. ու մեր
Աստուծոյն պէս վէմ չկայ։
3 Ալ ասկէ ետեւ հպարտութիւնով
մի՛ պարծենաք, ձեր բերնէն
ամբարտաւանութիւն չելլէ. քան-
զի Տէրը՝ գիտութեանց Աստուածն
է, ու անիկայ մարդուն գործքը կը
կշռէ։
4 Զօրաւորներուն աղեղները կոտ-
րեցան ու տկարները ուժ հա-
գան։
5 Կուշտ եղողները հացի համար
վարձկան եղան, եւ անօթի եղող-
ները կշտացան, ու թողուցին. մինչեւ
որ ամուլը եօթը զաւակ ծնաւ, ու
շատ զաւակ ունեցողը տկարացաւ։
6 Մեռցընողը ու ողջացընողը,
գերեզմանը իջեցընողը ու վեր հա-
նողը՝ Տէրն է։
7 Աղքատցընողը, ու հարստացը-
նողը, ցածցընողը ու բարձրացը-
նողը՝ Տէրն է։
8 Անիկայ աղքատը փոշիէն կը
վերցընէ, ու կարօտը աղբիւսէն կը
հանէ, որ իշխաններուն հետը նըս-
տեցընէ, ու փառաց աթոռը անոնց
ժառանգեցընէ. քանզի երկրիս
հիմերը Տէրոջն է. ու աշխարհս
անոնց վրայ հաստատեց։
9 Անիկայ իր սուրբերուն ոտքերը
կը պահէ ու չարագործները մու-
թին մէջը պիտի կորսուին. քանզի
մարդը իր ուժովը յաղթող չըլլար։
10 Տէրոջը դէմ հակառակողները
պիտի կոտրուին. երկինքէն ա-
նոնց վրայ պիտի որոտայ. Տէրը
երկրիս ծայրերը պիտի դատէ, եւ
իր թագաւորին ուժ պիտի տայ, ու
իր օծեալին եղջիւրը պիտի բարձ-
րացընէ։
11 Ու Եղկանա Ռամա իր տունը
գնաց. եւ Սամուէլ մանուկը Հե-
ղի քահանային առջեւը Տէրոջը ծա-
12 ռայութիւն կ'ընէր։ Ու Հեղիին
որդիքը չար մարդիկներ ըլլալով
13 Տէրը չէին ճանչնար։ Եւ քահա-
նայից սովորութիւնը աս էր, որ
երբոր ժողովուրդէն մէկը զոհ մա-
տուցանէր, միսին եփած ատենը՝
քահանային սպասաւորը ձեռքը ե-
րեքժանի մսահան մը առած կու
14 գար. Ու զանիկայ կաթսային,
կամ սանին կամ եփարանին, կամ
պտուկին մէջը կը խոթէր, ու
մսահանը ինչ որ հանելու ըլլար,
քահանան զանիկայ իրեն կ'առնէր։
Անոնք Սելովի մէջ՝ բոլոր հոն եկող
Իսրայէլացիներուն այսպէս կ'ընէ-
15 ին։ Նաեւ ճարպը այրելէն առաջ՝
քահանային սպասաւորը կու գար,
ու զոհ ընող մարդուն կ'ըսէր. Քա-
հանային համար խորովելու միս
տուր. քանզի անիկայ քեզմէ եփած
միս չառներ. այլ հում միս կ'ուզէ։
16 Եւ այն մարդը երբոր ըսէր թէ՝
Թող հիմա ճարպը այրեն, ու ետքը
սրտիդ ուզածին չափ առ. այն ա-
տենը կ'ըսէր. Չէ՝ հիմա տուր.
17 եթէ ոչ՝ բռնի կ'առնեմ։ Այսպէս
այն երիտասարդներուն մեղքը Տէ-
րոջը առջեւը շատ մեծ էր. քանզի
մարդիկները Տէրոջը զոհը կ'ար-
համարհէին։
18 Եւ Սամուէլ մանուկը՝ կտաւէ
եփուտ հագած՝ Տէրոջը առջեւը
19 ծառայութիւն կ'ընէր։ Ու անոր
մայրը պզտիկ պատմուճան կը
շինէր անոր, ու տարուէ տարի երբ-
որ իր էրկանը հետ տարեկան զոհը

ընելու կ'ելլէր , անոր կը տանէր ։
20 Եւ Հեղի Եղկանան ու անոր կնիկը
օրհնելով՝ ըսաւ . Տէրը քեզի՝ աս
կնիկէն զաւակներ տայ , Տէրոջը
տրուած փոխին տեղը . ու անոնք
21 իրենց տեղը դարձան ։ Եւ Տէրը
այցելութիւն ըրաւ Աննային , որ
յղացաւ , ու երեք տղայ ու երկու
աղջիկ ծնաւ . Սամուէլ մանուկն
ալ Տէրոջը առջեւը մեծցաւ ։
22 Եւ Հեղի խիստ ծերացեր էր .
ու անոր որդիքը ինչ որ կ'ընէին
բոլոր Իսրայէլին , և ինչպէս անոնք
ժողովքի խորանին առջեւը խումբերով ժողվուած կնիկներուն հետ
կը պառկէին , ամէնն ալ կը լսէր ։
23 Եւ անոնց ըսաւ . Ինչո՞ւ համար ասանկ բաներ կ'ընէք . քանզի ես աս
բոլոր ժողովուրդին բերնէն ձեզի
24 համար գէշ խօսքեր կը լսեմ . Մի՛
ընէք՝ տղաքս , քանզի աղէկ չեն ան
լուրերը որ ես կը լսեմ . դուք Տէրոջը ժողովուրդը կը մոլորեցնէք ։
25 Թէ որ մարդ մը՝ մարդու դէմ մեղք
գործէ , անոր դատաստանը Աստուած կը կտրէ . բայց թէ որ մարդ
մը Տէրոջը դէմ մեղք գործէ , անոր
համար ո՞վ աղաչանք պիտի ընէ ։
Սակայն անոնք իրենց հօրը խօսքը
մտիկ չէին ըներ . քանզի Տէրը զա-
26 նոնք մեռցնել կ'ուզէր ։ Ու Սամուէլ մանուկը օրէ օր կը մեծնար .
և Տէրոջը ու մարդոց հաճոյ էր ։
27 Եւ Աստուծոյ մէկ մարդը Հեղիին եկաւ , ու անոր ըսաւ . Տէրը
այսպէս կ'ըսէ . Քու հօրդ տանը
յայտնապէս երեւցայ , երբոր անոնք
Եգիպտոսի մէջ Փարաւոնին տանը
28 ծառայ էին . Ու Իսրայէլի բոլոր
ցեղերէն զանիկայ ինծի քահանայ
ընտրեցի , որ իմ սեղանիս վրայ
զոհ մատուցանէ , խունկ ծխէ , ու
իմ առջեւս եփուտ հագնի և Իսրայէլի որդւոցը բոլոր պատարագ-
29 ները քու հօրդ տանը տուի . Ուրեմն իմ տանս համար հրամայած զոհերս ու ընծաներս ինչո՞ւ կ'անարգէք , և քու որդիներդ ինծմէ աւելի կը փառաւորես , որ իմ ժողովուրդիս Իսրայէլին ընտիր զոհե-
30 րովը ձեզ գիրցնէք ։ Անոր համար Իսրայէլին Տէր Աստուածը
այսպէս կ'ըսէ . Իրաւցնէ ըսեր
էի որ՝ քու տունդ ու քու հօրդ
տունը յաւիտեան իմ առջեւս պըտըտին . բայց հիմա Տէրը կ'ըսէ .
Քաւ լիցի . քանզի ես զիս փառաւորողները պիտի փառաւորեմ .
ու զիս արհամարհողները պիտի
31 անարգուին ։ Ահա օրեր պիտի
գան , որ քու թեւդ ու քու հօրդ
տանը թեւը պիտի կտրեմ , որ քու
32 տանդ մէջ ծեր չգտնուի ։ Եւ Իս-
րայէլը ամէն տեսակ բարութիւն
վայելած ատենը , դուն բնակարանի դժբաղդութիւն պիտի տեսնես ,
ու քու տանդ մէջ բնաւ ծեր պի-
33 տի չգտնուի ։ Եւ քու այն մէկ մնացած մարդը որ իմ սեղանէս չեմ
կտրեր , քու աչքերդ նուաղեցնելու ու քու սիրտդ վշտացնելու
համար պիտի մնայ . և քու տանդ
բոլոր զաւակները երիտասարդու-
34 թեան մէջ պիտի մեռնին ։ Ու
քու երկու որդւոցդ Ոփնիին ու
Փենէհեսին գլուխը գալիքը՝ քեզի
նշան ըլլայ , այսինքն երկուքին ալ
35 մէկ օրուան մէջ մեռնիլը ։ Եւ
ինծի մէկ հաւատարիմ քահանայ
մը պիտի հանեմ , որ բոլոր իմ
սրտիս ու հոգւոյս մէջի եղածը
կատարէ , և անոր մէկ հաւատարիմ տուն մը պիտի շինեմ . ու
միշտ իմ օծեալիս առջեւը պիտի
36 պտըտի ։ Եւ քու տունէդ ով որ
մնայ , կտոր մը արծաթի համար՝
ու նկանակ մը հացի համար՝ պիտի
գայ անոր երկրպագութիւն ընէ ,
ու ըսէ . Կ'աղաչեմ , զիս մէկ քահանայական պաշտօնի մը վրայ
դիր , որ պատառ մը հաց ուտեմ ։

## ԳԼ . Գ

1 Տէրոջը խօսքը առջի անգամ Սամուէլին կը յայտնուի ։ 11 Աստուած Սամուէլին կը ծանուցանէ Հեղիի տանը աւերումը ։ 15 Սամուէլ սկսմայ իր տեսիլքը Հեղիին կը պատմէ ։ 19 Սամուէլին համբաւը կը տարածուի ։

1 Եւ Սամուէլ մանուկը Հեղիին
առջեւը Տէրոջը ծառայութիւն
կ'ընէր . և այն օրերը Տէրոջը խօսքը հազուագիւտ էր , ու յայտնի
2 տեսիլք չկար ։ Ու օր մը Հեղի իր
տեղը պառկեր էր . (և անոր աչքերը սկսեր էին ծանրանալ , ու
3 չէր կրնար տեսնել .) Եւ Աստուծոյ կանթեղը տակաւին մարած
չէր , ու Սամուէլ Տէրոջը տաճարին մէջը կը քնանար , ուր որ Աս-
4 տուծոյ տապանակը կար ։ Եւ Տէրը կանչեց Սամուէլը . ու անիկայ՝
5 Հոս եմ , ըսաւ . Եւ Հեղիին վազելով՝ ըսաւ . Ահա հոս եմ . ինչու որ զիս կանչեցիր ։ Ու անիկայ ըսաւ . Ես չկանչեցի . դարձիր
պառկէ ։ Ան ալ դարձաւ պառ-
6 կեցաւ ։ Եւ Տէրը մէյմըն ալ՝ Ո՛վ
Սամուէլ , կանչեց . ու Սամուէլ
ելաւ Հեղիին գնաց , ու ըսաւ . Ահա հոս եմ . ինչու որ զիս կանչեցիր ։ Ու անիկայ ըսաւ . Որդեակ իմ՝ ես չկանչեցի . դարձիր
7 պառկէ ։ Եւ Սամուէլ դեռ Տէրոջը չէր ճանչնար . ու Տէրոջը խօսքը դեռ անոր յայտնուած
8 չէր ։ Եւ նորէն երրորդ անգամ

Ն . Ք . ԴԲ . Իրր 1165
Ծն . ԺԴ . 19 ։
Գլ . Ա 23 ։
Ծն . ԻԱ 1 ։
Հմր 26 ։ Գլ . Գ . 19 ։ Դատ . ԺԿ . 24 ։ Ղուկ . Ա . 80 ։ Բ . 40 ։
Տես Ել . ԼԸ . 8 ։
Կամ՝ անոր համար քաւութիւն կ'ըլլայ Աստուծոյ առջեւը .
Թուոց . ԺԵ . 30 ։
Յես . ԺԱ . 20 ։ Առակ . ԺԵ . 10 ։
Հմր 21 ։
Առակ . Գ . 4 ։ Ղուկ . Բ . 52 ։ Գործ . Բ . 47 ։ Հռով . ԺԴ . 18 ։
Գ Թագ . ԺԳ . 1 ։
Ել . Դ . 14 , 27 ։
Ել . ԻԸ . 1 , 4 ։ Թուոց . ԺԶ . 5 ։ ԺԸ . 1 , 7 ։
Ղեւ . Բ . 3 , 10 ։ Գ . 16 ։ Է . 7 , 8 , 34 , 35 ։ Ժ . 14 , 15 ։ Թուոց . Ե . 9 , 10 ։ ԺԸ . 8—19 ։
Բ Օր . ԺԲ . 5 , 6 ։
Բ Օր . ԼԲ . 15 ։
Ել . ԻԹ . 9 ։
Երեմ . ԺԸ . 9 , 10 ։
Սաղ . ԺԸ . 20 ։ Ղա . 14 ։
Մաղ . Բ . 9 ։
Գ Թագ . Բ . 27 ։ Եզեկ . ԽԴ . 10 ։
Տես Գլ . Դ . 11 , 18 , 20 ։ ԺԴ . 3 ։ ԻԲ . 18 , 20 ։

Ն . Ք . ԴԲ . Իրր 1165
Տես Զաք . Ը . 4 ։
Եբր . մարդ ըլլալու մեռնին .
Գ Թագ . ԺԴ . 3 ։
Գլ . Դ . 11 ։
Գ Թագ . Բ . 35 ։ Ա Մն . ԻԹ . 22 ։ Եզեկ . ԽԴ . 15 ։
Բ Թագ . Է . 11 , 27 ։ Գ Թագ . ԺԱ . 38 ։
Սաղ . Բ . 2 ։ ԺԸ . 50 ։
Գ Թագ . Բ . 27 ։
Գլ . Բ . 11 ։
Սաղ . ՀԴ . 9 ։ Ամով . Ը . 11 ։ Տես Հմր 21 ։
Իրր 1141
Եբր . սն օրը
Ծն . ԻԵ . 1 ։ Իբր . 10 ։ Գլ . Բ . 22 ։ Գ . 15 ։
Ել . ԻԵ . 21 ։ Ղեւ . ԻԴ . 3 ։ Բ Մն . ԺԴ . 11 ։
Գլ . Ա . 9 ։
Եբր . Ահա ես .
Տես Գործ . ԺԹ . 2 ։

Ն․ Ք․ Զ․ Ք․ Իրր 1141

Տէրը կանչեց , Ո՛վ Սամուէլ . ու
Սամուէլ ելաւ Հեղիին գնաց , ու
ըսաւ . Ահա հոս եմ . ինչու որ
զիս կանչեցիր ։ Եւ Հեղի իմա-
ցաւ որ մանուկը կանչողը Տէրն
9 է . Ու Հեղի Սամուէլին ըսաւ .
Գնա պառկէ , ու թէ որ մէյմըն ալ
քեզ կանչէ , ըսէ . Ո՛վ Տէր՝
խօսէ , քանզի քու ծառադ մը-
տիկ կ՚ընէ ։ Ու Սամուէլ գնաց
10 իր տեղը պառկեցաւ ։ Եւ Տէրը
եկաւ կայնեցաւ . ու առջի ան-
գամներուն պէս՝ Սամուէլ Սամու-
էլ՝ կանչեց . ու Սամուէլ ըսաւ .
Խօսէ՛ Տէ՛ր , քանզի քու ծառադ
11 մտիկ կ՚ընէ ։ Ան ատենը Տէրը
Սամուէլին ըսաւ . Ահա ես Իսրա-
յէլի մէջ անանկ բան մը պիտի ը-
նեմ , ե որ զանիկայ ամէն լսողին եր-
12 կու ականջները պիտի խօսին ։ Ան
օրը Հեղիին վրայ պիտի կատարեմ
է ամէն ինչ որ անոր տանը վրայով
խօսեր եմ . պիտի սկսիմ , ու պի-
13 տի լմընցընեմ ։ Ը Եւ իրեն իմացու-
ցեր եմ որ ծ անոր տունը պիտի դա-
տեմ մինչև յաւիտեան , իր գիտցած
անօրէնութեանը համար . քանզի
ժ անոր որդիքը իրենց վրայ անէծք կը
բերեն , ու անիկայ ի չյանդիմաներ
14 զանոնք ։ Ասոր պատճառաւ Հեղիին
տանը համար երդում ըրի , որ Հե-
ղիին տանը անօրէնութեանը՝ ի զո-
հերով ու ընծաներով յաւիտեան
քաւութիւն չըլլայ ։
15 Եւ Սամուէլ մինչև առտու պառ-
կեցաւ , ու ետքը Տէրոջը տանը
դռները բացաւ . և Սամուէլ վախ-
ցաւ ան տեսիլքը Հեղիին պատմե-
16 լու ։ Բայց Հեղի՝ Սամուէլը կան-
չեց , ու ըսաւ . Ո՛րդեակ իմ Սա-
մուէլ . ու անիկայ ըսաւ . Ահա հոս
17 եմ ։ Եւ անիկայ ըսաւ . Քեզի
ըսած խօսքը ի՞նչ է . ինծմէ մի՛
պահեր . ծ Աստուած քեզի այսպէս՝
ու աւելի աւելի ընէ , թէ որ քեզի
ըրուցած բոլոր խօսքերէն մէկ խօսք
18 մը ինծմէ պահես ։ Եւ Սամուէլ
բոլոր խօսքերը անոր պատմեց , ան-
կէ չպահեց ։ Ու Հեղի ըսաւ . Ա-
նիկայ Տէրն է . իր աչքերուն հա-
ճոյ երևցածը թող ընէ ։
19 Եւ Սամուէլ ն մեծցաւ , ու Յ Տէրը
անոր հետն էր , Ն և իր ըսած խօսքե-
20 րէն մէկը գետինը չձգեց ։ Ու Դա-
նէն մինչև Բերսաբէէ բոլոր Իսրա-
յէլը իմացաւ , որ Սամուէլ հաս-
տատուած է Տէրոջը մարգարէ ըլ-
21 լալու ։ Եւ Տէրը Սելովի մէջ նո-
րէն երևցաւ . քանզի Տէրը Սելովի
մէջ՝ Սամուէլին կը յայտնուէր
Տէրոջը խօսքովը ։ Ու բոլոր Իս-
րայէլի մէջ Սամուէլին խօսքը կը
տարածուէր ։

ե դ Թագ․ ի․ 12 ։ Երեմ․ ժԹ․ 3 ։
Է Գլ․ Բ․ 30—36 ։
Ը Գլ․ Բ․ 29, 30, 31, ։
Ծ Եզեկ․ Է․ 3 ։ ԺԸ․ 30 ։
Ժ Գլ․ Բ․ 12, 17, 22 ։
Ի Գլ․ Բ․ 23, 25 ։
Լ Թուոց․ ԺԵ․ 30, 31 ։ Եբ․ Ի․ 14 ։
Ծ Հռութ․ Ա․ 17 ։
Կ Յոբ․ Ա․ 21 ։ Բ․ 10 ։ Սաղ․ ԼԹ․ 9 ։ Ես․ ԼԹ․ 8 ։
Հ Գլ․ Բ․ 21 ։
Յ Ծն․ ԼԹ․ 2, 21, 23 ։
Ն Գ․ ԺԹ․ 6 ։
Շ Դատ․ Ի․ 1 ։
Ո Հռմ 1, 4 ։

ԳԼ․ Դ

1 Իսրայէլացիք Աբեննեզերի մօտ Փղշտացիներէն յաղթուելով , 3 տապանակը բերել կու տան ։ 7 Ասոր վրայ Փղշտացիք խիստ կը վախնան ։ 10 Իսրայէլացիք նորէն կը յաղթուին . տապանակը գերի կը տարուի , և Ոփնին ու Փենեհէսը կը սպաննուին ։ 13 Հեղի աս բաները լսելով՝ կռնակին վրայ կ՚իյնայ , ու վիզը կը կոտրի ։ 19 Նաև Փենեհեսին կնկանը սիրտը խաղալով՝ Իքաբոդը կը ծնանի , ու ինքը կը մեռնի ։

Ն․ Ք․ Զ․ Ք․ Իրր 1411

1 Եւ Իսրայէլ պատերազմով Փղըշ-
տացիները դիմաւորելու ելաւ ,
ու Ա Աբեննեզերի մէջ բանակեցաւ .
ու Փղշտացիք Ափեկի մէջ բանա-
2 կեցան ։ Եւ Փղշտացիք Իսրայէլին
դիմացը շարուեցան . ու պատե-
րազմը տարածուեցաւ . և Իսրայէլը
յաղթուեցաւ Փղշտացւոց առջևը ,
որոնք պատերազմի ասպարէզին մէջը
չորս հազար մարդու չափ կոտրեցին ։
3 Ու ժողովուրդը բանակը դարձաւ .
և Իսրայէլի ծերերը ըսին . Ինչու
համար Տէրը Փղշտացւոց առջևը
կոտրեց մեզ այսօր . Տէրոջը ուխ-
տին տապանակը Սելովէն մեր քովը
առնենք , ու մեր մէջը գտնուի , որ
մեզ ազատէ մեր թշնամիներուն
4 ձեռքէն ։ Ուստի ժողովուրդը մար-
դիկներ խրկեց դէպ ի Սելով , և Բ քե-
րովբէներուն մէջը Գ նստող՝ զօրու-
թեանց Տէրոջը ուխտին տապանա-
կը անկէ վերցուցին . ու Հեղիին
երկու որդիքը Ոփնի ու Փենեհէս՝
հոն Աստուծոյ ուխտի տապանակին
5 հետն էին ։ Ու երբոր Տէրոջը ուխ-
տին տապանակը բանակին մէջը
մտաւ , բոլոր Իսրայէլը մեծ ձայ-
նով մը աղաղակեց , ու գետինը
6 ձայն տուաւ ։ Եւ Փղշտացիք ան
աղաղակի ձայնը լսելով՝ ըսին . Եբ-
րայեցւոց բանակին մէջ աս բարձ-
րաձայն աղաղակը ի՞նչ պիտի ըլ-
լայ . ու իմացան որ Տէրոջը տա-
7 պանակը բանակը եկեր է ։ Եւ
Փղշտացիք վախցան , քանզի ըսին .
Աստուած բանակին մէջը եկաւ . ու
նաև ըսին . Վա՜յ մեզի . քանզի մինչև
8 հիմա ասանկ բան եղած չէ . Վա՜յ
մեզի , աս զօրաւոր Աստուածնե-
րուն ձեռքէն ո՞վ մեզ պիտի ազա-
տէ . ասոնք ան Աստուածներն են ,
որ Եգիպտոսը ամէն հարուածնե-
րով զարկին անապատին մէջ ։
9 Դ Ուժովցէք ու կտրիճ եղէք՝ ով
Փղշտացիք , չըլլայ որ Եբրայեցւոց
ծառայ ըլլաք , Ե ինչպէս որ անոնք
ձեզի ծառայ եղան . ուստի կտրիճ
եղէք՝ և անոնց հետ պատերազմե-
10 ցէ՛ք ։ Ու երբոր Փղշտացիք պա-
տերազմեցան , Զ Իսրայէլը յաղ-
թուեցաւ , և ամէն մարդ իր վրա-
նը փախաւ , ու շատ մեծ կոտորած
եղաւ , և Իսրայէլէն երսուն հազար

Ա Գլ․ Ե․ 1 ։ Է․ 12 ։
Բ Եւ․ ԻԵ․ 18 , 22 ։ Թուոց․ Է․ 89 ։
Գ Բթագ․ Զ․ 2 ։ Սաղ․ Ձ․ 1 ։ ՂԹ․ 1 ։
Դ Ա Կոր․ ԺԶ․ 13 ։
Ե Դատ․ ԺԳ․ 1 ։
Զ Հմր 2 ։ Ղև․ ԻԶ․ 17 ։ Բ Օր․ ԻԸ․ 25 ։ Սաղ․ ՀԸ․ 9, 62 ։

Ն. Ք. ԳՔ. Իրր 1141
Է Սաղ. ՀԸ. 61:
Ը Գլ. Բ. 34: Սաղ. ՀԸ. 64:
Բ Բթագ. Ա. 2:
Ժ Յես. Է. 6: Բթագ. Ժգ. 19: Ժե. 32: Նեեմ. Թ. 1: Յոբ. Բ. 12:
Է Գլ. Ա. 9:
Լ Գլ. Գ. 2:
Եբր. Կեցած
Է Բթագ. Ա. 4:
‡ Կամ՝ կռնակին
Ժ Ծն. ԼԵ. 17:
§ Գլ. ԺԴ. 3:
‡ Ա՝ անփառութիւն:
Հ Սաղ. ԻԸ. 3: ՀԸ. 61:

11 Հետեւակ զօրք ինկաւ. Նաև Է Աս-
տուծոյ տապանակը առնուեցաւ.
Ըև Հեղիին երկու որդիքը՝ Ոփնին
ու Փենէհէսը մեռան:
12 Եւ Բենիամինեան մարդ մը բա-
նակէն վազելով՝ Բ նոյն օրը Սելովը
հասաւ, ու իր լաթերը պատռեր
էր, և Ժ իր գլխուն վրայ հող Ժլեր
13 էր: Ու երբոր հոն հասաւ, ահա
Հեղի Էաթոռով մը ճամբուն քովը
նստած կը սպասէր. քանզի Աս-
տուծոյ տապանակին համար սիրտը
կը դողար: Ու երբոր այն մարդը
քաղաքը մտնելով՝ ան լուրը պատ-
մեց, բոլոր քաղաքը աղաղակեց:
14 Եւ Հեղի այն աղաղակին ձայնը լսե-
լով՝ ըսաւ. Աս աղմուկին ձայնը
ի՞նչ պիտի ըլլայ: Ու այն մարդը
շուտով վազեց եկաւ, ու եղածը Բա-
15 նէրը Հեղիին պատմեց: Եւ Հեղի
իննսունըութը տարեկան էր, ու
Լ աչքերը այնպէս ՟տկարացած էին,
16 որ չէր կրնար տեսնել: Եւ այն մար-
դը Հեղիին ըսաւ. Զօրքին մէջէն
եկողը ես եմ, և պատերազմէն այս-
օր փախայ ու անիկայ ըսաւ.
17 Է Ո՞րդեակ՝ ի՞նչ եղաւ: Եւ լուր
բերողը պատասխան տուաւ, ու ը-
սաւ. Իսրայէլը Փղշտացւոց առ-
ջեւէն փախաւ, ու ժողովուրդին
մէջը մեծ կոտորած եղաւ, և քու
երկու որդիքդ՝ Ոփնին ու Փենէհէ-
սը մեռան, ու Աստուծոյ տապա-
18 նակը առնուեցաւ: Ու երբոր ա-
նիկայ Աստուծոյ տապանակը յի-
շեց, Հէլի աթոռէն կռնակի վրայ
ինկաւ դրանը քովը, և ‡ վիզին ոս-
կորը կոտրեցաւ, ու մեռաւ. քան-
զի ծեր ու ծանրացած մարդ մըն էր.
և անիկայ Իսրայէլի մէջ քառսուն
տարի դատաւորութիւն ըրած էր:
19 Ու անոր հարսը՝ Փենէհէսին կնի-
կը՝ յղի ու ծնանելու մօտ ըլլալով,
երբոր Աստուծոյ տապանակին առ-
նուելուն՝ և իր աներոջը ու էրկանը
մեռնելուն լուրը լսեց, ծունկ չոքե-
լով՝ ծնաւ. քանզի ցաւերը անոր
20 վրայ կոխեցին: Ու երբոր կը մեռ-
նէր, Ժ քովը կայնող կնիկները անոր
ըսին. Մի վախնար, ինչու որ քու
ծնածդ տղայ է. բայց անիկայ պա-
տասխան չտուաւ, ու ուշադրու-
21 թիւն չըրաւ: Եւ տղուն անունը
§‡ Իքաբօդ կոչեց, ըսելով. Հ Իս-
րայէլէն փառքը վերցաւ. (քանզի
Աստուծոյ տապանակը առնուե-
ցաւ, և անոր աները ու էրիկը մե-
22 ռան:) Անոր համար ըսաւ. Աս-
տուծոյ տապանակը առնուելուն
համար՝ Իսրայէլէն փառքը վերցաւ:

## ԳԼ. Ե

1 Փղշտացիք տապանակը Ազովտոս բերելով՝ Դագոնի տանը մէջ կը դնեն: 3 Դագոն վար կ'իյնայ՝ ու կոոր կոոր կ'ըլլայ. և Ազովտացիք թանչքի ուռեցքներով կը զարնուին. 8 Նոյնպէս Աստուած կը պատժէ Գեթացիները քանի որ իրենց քովը կը մնայ տապանակը. 10 Նոյնպէս ալ Ակկարոնացիները, երբոր տապանակը հոն կը տարուի:

1 Եւ Փղշտացիք Աստուծոյ տապա-
նակը առին ու զանիկայ Ա Ա-
2 բենեզերէն ‖ Ազովտոս տարին: Եւ
Փղշտացիք Աստուծոյ տապանակը
առին, ու զանիկայ Բ Դագոնի տու-
նը տարին. և Դագոնին քովը դրին:
3 Ու հետեւեալ օրը Ազովտացիք ա-
ռաւօտուն կանուխ ելլելով, տեսան
որ Դագոնը Տէրոջը տապանակին
առջեւը Ժ երեսի վրայ գետինը ինկեր
էր. ու անոնք Դագոնը վերցուցին
4 Ժ իր տեղը դրին: Եւ հետեւեալ օ-
րը՝ առաւօտուն կանուխ
ելան, ու տեսան որ Դագոնը Տէ-
րոջը տապանակին առջեւ երեսի
վրայ գետինը ինկեր էր և Է Դագո-
նին գլուխը ու ձեռքերուն երկու
ափը կոտրած սեմին վրայ
էր, միայն § Դագոնին մարմինը
5 մնացեր էր. (Աս պատճառաւ
Դագոնի քուրմերը՝ ու Դագոնի
տունը բոլոր մտնողները՝ մինչև աս
օրս Ազովտոս եղող Դագոնի սե-
6 մին վրայ չեն կոխեր:) Անկէ ետև
Է Տէրոջը ձեռքը Ազովտացւոց վրայ
ծանրացաւ, ու Ը զանոնք կործան-
ցուց, և զանոնք Ազովտոսի ու ա-
նոր սահմաններուն մէջը Բ թանչքի
ուռեցքներով զարկաւ:
7 Եւ Ազովտոսի բնակիչները ա-
սանկ ըլլալը տեսնելով, ըսին. Իս-
րայէլի Աստուծոյն տապանակը մեր
քովը չկենայ. քանզի անոր ձեռքը
մեր վրայ՝ ու մեր աստուծոյն Դա-
8 գոնին վրայ ծանրացաւ: Եւ մարդ
ղրկեցին, ու Փղշտացւոց բոլոր նա-
խարարները իրենց քովը ժողվեցին,
ու ըսին. Իսրայէլի Աստուծոյն
տապանակը ի՞նչ ընենք. ու ըսին.
Իսրայէլի Աստուծոյն տապանակը
Գէթը փոխադրուի: Ու Իսրա-
յէլի Աստուծոյն տապանակը Գէթը
9 փոխադրեցին: Եւ զանիկայ հոն
փոխադրելէն ետքը, Ժ Տէրոջը ձեռ-
քը այն քաղաքին վրայ ըլլալով՝
Է մեծ խռովութիւն եղաւ. ու Ը քա-
ղաքին մարդիկը պզտիկէն մինչև
մեծը զարկաւ և անոնց վրայ
թանչքի ուռեցքներ երևցան:
10 Եւ Աստուծոյ տապանակը Ակ-
կարոն ղրկեցին. ու երբոր Աստու-
ծոյ տապանակը Ակկարոն մտաւ,
Ակկարոնացիք կանչվռտելով ը-
սին. Իսրայէլի Աստուծոյն տապա-
նակը մեզի բերին՝ որ մեզ ու մեր
11 ժողովուրդը մեռցնեն: Եւ մարդ
ղրկելով՝ Փղշտացւոց բոլոր նախա-
րարները ժողվեցին, ու ըսին. Իս-

Ն. Ք. ԳՔ. Իրր 1141
Ա Գլ. Դ. 1: Է. 12:
‖ Որ է Ասեդոդ
Բ Դատ. ԺԶ. 23:
Ժ Ես. ԺԹ. 1: Խգ. Ա. 2:
Ժ Ես. ԽԶ. 7:
Է Երեմ. Ն. 2: Եզեկ. Զ. 4. 6: Միք. Ա. 7:
§ Կամ՝ ձուկը: Եբր. Դագոնը:
Ն Տես Սոփ. Ա. 9:
Է Հմր. Է. 11: Ել. Թ. 3: Սաղ. ԼԸ. 4: Գործ. ԺԳ. 11:
Ը Գլ. Զ. 5:
Բ Բ Օր. ԻԸ. 27: Սաղ. ՀԸ. 66:
Ժ Բ Օր. Բ. 15: Գլ. Է. 13: ԺԲ. 15:
Է Հմր 11:
Ը Հմր 6: Սաղ. ՀԸ. 66:

Ն. Վ. ԳՔ.
Իբր 1141

րայէլի Աստուծոյն տապանակը
թող տուէք երթայ, և իր տեղը
դառնայ, որ մեզ ու մեր ժողո-
վուրդը չմեռցընէ. քանզի բոլոր
քաղաքին մէջը մահառիթ սոս-
կում մը կար, ⁱ ու հոն Աստուծոյ
12 ձեռքը խիստ ծանրացեր էր ։ Եւ
չմեռած մարդիկները՝ թանչքի ու-
ռեցքներով զարնուեցան. ու քա-
ղաքին աղաղակը երկինքը ելաւ ։

ⁱ Հմր 6, 9 ։

ԳԼ. Զ

1 Եօթը ամիսէն ետքը Փղշտացիք խորհուրդ կ'ընեն՝ թէ ինչպէս պարտին տապանակը ետ ղրկել ։ 10 Զանիկայ նոր սայլի մը վրայ կը դնեն ընծաներով, և դէպ'ի Բեթսամիւս կը ղրկեն ։ 19 Բեթսամիւսացիք կը զարնուին՝ տապանակին մէջը նայելնուն համար. 21 ու Կարիաթարիմի բնակչացը լուր կը ղրկեն, որ գան տապանակը տանին ։

Իբր 1140

1 Եւ Տէրոջը տապանակը Փղշտա-
ցւոց երկրին մէջը եօթը ամիս
2 մնաց ։ Ու Փղշտացիք ᵃ իրենց
քուրմերը ու բաղդ նայողները կան-
չեցին՝ ու ըսին. Եհովային տապա-
նակին ի՞նչ ընենք. մեզի իմացու-
ցէք թէ զանիկայ ինչո՞վ իր տեղը
3 ղրկենք ։ Անոնք ալ ըսին. Թէ
որ Իսրայէլի Աստուծոյն տապանա-
կը ղրկէք, զանիկայ ᵇ պարապ
չղրկէք. հապա անպատճառ ᶜ յան-
ցանքի պատարագ տուէք անոր.
ան ատենը կը բժշկուիք, ու ᵈ ձեզի
յայտնի կ'ըլլայ թէ ինչու համար
անոր ձեռքը ձեր վրայէն չերթար ։
4 Եւ անոնք ըսին. Անոր ի՞նչ տեսակ
պատարագ մատուցանենք ։ Ու
անոնք ըսին. ᵉ Փղշտացւոց նա-
խարարներուն թուովը հինգ ոսկե-
ղէն թանչքի ուռեցքներ՝ ու հինգ
ոսկի մուկ ընծայ տուէք. քանզի ձեր
ամենուն վրայ՝ և ձեր նախարար-
ներուն վրայ՝ մի և նոյն հարուածը
5 եղաւ ։ Եւ հիմա ձեր թանչքի
ուռեցքներուն պատկերները, ու
ձեր ᶠ երկիրը աւրող մուկերուն
պատկերները շինեցէ՛ք, ու ᵍ Իսրա-
յէլի Աստուծոյն փառք տուէք.
կարելի է որ իր ձեռքը՝ ձեր վրա-
յէն, ʰ ձեր աստուածներուն վրա-
յէն ու ձեր երկրին վրայէն ⁱ վեր-
6 ցընէ ։ Եւ ինչո՞ւ համար ձեր սիր-
տերը կը խստացընէք ʲ ինչպէս որ
Եգիպտացիք ու Փարաւոն իրենց
սիրտերը խստացուցին. չէ՞ որ Ա-
ստուած անոնց մէջը հրաշալի գործ-
քեր ընելէն ետքը՝ ᵏ զանոնք թող
7 տուին որ երթան ։ Հիմա ˡ մէկ
նոր սայլ մը շինեցէք, ու երկու
հատ կաթնտու երինջ առէք, ᵐ որ
անոնց վրայ բնաւ լուծ դրուած
չըլլայ. ու երինջները սայլին լծե-
ցէք, և անոնց ձագերը անոնց

ᵃ Ծն. խա. 8 ։ Ել. է. 11 ։ Դան. բ. 2 ։ ե. 7 ։ Մատ. բ. 4 ։
ᵇ Ել. իգ. 15 ։ Բ Օր. ժզ. 16 ։
ᶜ Ղև. ե. 15, 16 ։
ᵈ Հմր 9 ։
ᵉ Տես Հմր 17, 18 ։ Յես. ժգ. 3 ։ Դատ. գ. 3 ։
ᶠ Գլ. ե. 6 ։
ᵍ Յես. է. 19 ։ Ես. խբ. 12 ։ Մաղ. բ. 2 ։ Յով. թ. 24 ։
ʰ Գլ. ե. 3, 4, 7 ։
ⁱ Տես Գլ. ե. 6, 11 ։ Սաղ. լթ. 10 ։
ʲ Ել. է. 13 ։ ը. 15 ։ ժգ. 17 ։
ᵏ Ել. ժբ. 31 ։
ˡ Բ Թագ. զ. 3 ։
ᵐ Թւ. ժթ. 2 ։

8 ետևէն տուն դարձուցէք. Ու Եհո-
վային տապանակը առէք, և զա-
նիկայ սայլին վրայ դրէք, ու ⁿ ան
ոսկեղէն * պատկերները որ դուք
յանցանքի համար անոր ընծայ պի-
տի տաք, պզտիկ արկղով մը անոր
մէկ կողմը դրէք. ու զանիկայ
9 ղրկեցէք որ երթայ. Եւ նայեցէք,
թէ որ իր սահմանին ճամբովը
ᵒ Բեթսամիւսը ելլէ, աս մեծ չարի-
քը մեզի ընողը անիկայ է. ապա
թէ ոչ՝ ᵖ գիտնանք որ անոր ձեռ-
քը բնաւ մեզի դպած չէ, հապա աս
բանը դիպուածով պատահեր է
մեզի ։
10 Եւ ան մարդիկները այսպէս ը-
րին. երկու հատ կաթնտու երինջ
առին, ու զանոնք սայլին լծեցին,
և անոնց ձագերը տան մէջ գոցե-
11 ցին ։ Ու Տէրոջը տապանակը, և
ոսկի մուկերուն, ու իրենց թանչքի
ուռեցքներու պատկերներուն պզ-
տիկ արկղը սայլին վրայ դրին ։
12 Ու երինջները շիտակ Բեթսամիւսի
ճամբան բռնեցին ու մեծ ճամբա-
յէն բառաչելով կ'երթային, և աջ
կամ ձախ կողմը չխոտորեցան. ու
Փղշտացւոց նախարարները մինչև
Բեթսամիւսին սահմանը անոնց
13 ետևէն գացին ։ Եւ Բեթսամիւսա-
ցիք հովիտին մէջը ցորենի հունձք
կը ʳ հնձէին, ու իրենց աչքերը վեր-
ցընելով տապանակը տեսան, ու
տեսնելնուն համար ուրախացան ։
14 Եւ սայլը Բեթսամիւսացի Յեսուին
արտը մտաւ, ու հոն կայնեցաւ. և
հոն մէկ մեծ քար մը կար. ու սայ-
լին փայտերը ճեղքեցին, և ան ե-
րինջները Տէրոջը ողջակէզ մատու-
15 ցին ։ Ու Ղևտացիք՝ Տէրոջը տա-
պանակը, և անոր հետ եղող ոսկի
պատկերներուն պզտիկ արկղը վար
իջեցուցին, ու ան մեծ քարին վրայ
դրին. և ան օրը Բեթսամիւսի
մարդիկը Տէրոջը ողջակէզներ ու
16 զոհեր մատուցին ։ Ու ˢ Փղշտացւոց
հինգ նախարարները աս բաները
տեսնելէն ետքը՝ նոյն օրը Ակկարոն
17 դարձան ։ ᵗ Եւ ան ոսկեղէն թանչ-
քի ուռեցքները՝ որ Փղշտացիք
յանցանքի համար Տէրոջը ընծայ
տուին, ասոնք էին. Մէկ հատ մը՝
Ազովտոսի համար, մէկ հատ մը՝
Գազայի համար, մէկ հատ մը՝ Աս-
կաղոնի համար, մէկ հատ մը՝ Գե-
թի համար, ու մէկ հատ մը՝ Ակ-
18 կարոնի համար ։ Եւ ոսկի մուկե-
րը՝ Փղշտացւոց հինգ նախարարնե-
րուն բոլոր քաղաքներուն թուովն
էին, պարսպաւոր քաղաքէն մինչև
անպարիսպ գեղը, ու մինչև ան մեծ
քարը՝ որուն վրայ Տէրոջը տա-
պանակը դրուեցաւ. ու մինչև աս

Ն. Վ. ԳՔ.
Իբր 1140

ⁿ Հմր 4, 5 ։
* Եբր. «Ա-նօթները»
ᵒ Յես. ժե. 10 ։
ᵖ Հմր 3 ։
ˢ Յես. ժգ. 3 ։
ᵗ Հմր 4 ։

օրս ան քարը Բեթսամիւսացի Յե-
սուին արտին մէջը կը կենայ ։
19 Եւ Տէրը Բեթսամիւսին մար-
դիկները զարկաւ . քանզի անոնք
Տէրոջը տապանակին մէջը նայե-
ցան . ու ժողովուրդէն յիսուն
հազար եօթանասուն մարդ զար-
կաւ . և Տէրը ժողովուրդին մէջը
մեծ կոտորած ընելուն համար , ժո-
20 ղովուրդը սուգ բռնեց ։ Ու Բեթ-
սամիւսի մարդիկը ըսին . Աս
սուրբ Տէր Աստուծոյն առջևը ո՞վ
կրնայ կայնիլ . ու մեր քովէն ո-
21 րո՞ւն ելլէ ։ Եւ Կարիաթարիմի
բնակիչներուն պատգամաւորներ
խրկեցին՝ ըսելով . Փղշտացիք Տէ-
րոջը տապանակը ետ բերին . իջէք ,
ու զանիկայ ձեր քովը հանեցէք ։

## ԳԼ . Է

1 Կարիաթարիմի բնակիչները Աբինադաբին տունը կը տանին տապանակը , ու անոր որդին Եղիազարը կ'օրհնեն որ տապանակին պահպանութիւնը ընէ ։ 2 Քսան տարիէն ետքը 3 Իսրայէլացիք Սամուէլին յորդորանքովը Մասփայի մէջ հանդիսաւոր կերպով կ'ապաշխարեն ։ 7 Երբոր Սամուէլ կ'աղօթէ ու ողջակէզ կը մատուցանէ , Տէրը որոտումով ու կայծակով Փղշտացիները կը ջարդէ Աբենեզերի մէջ ։ 13 Փղշտացիք կը նուաճին ։ 15 Սամուէլ խաղաղութեամբ և բարեպաշտութեամբ Իսրայէլի մէջ դատաւորութիւն կ'ընէ ։

1 Եւ Կարիաթարիմի մարդիկը գա-
ցին , ու Տէրոջը տապանակը
անկէ հանեցին , և զանիկայ տարին
Աբինադաբին տունը՝ որ բլուրին
վրայ էր . ու անոր որդին Եղիազա-
րը որոշեցին որ Տէրոջը տապա-
2 նակին պահպանութիւնը ընէ ։ Եւ
տապանակը Կարիաթարիմի մէջ
դրուած օրէն ետքը շատ օրեր ան-
ցաւ , ու քսան տարի եղաւ , և
Իսրայէլի բոլոր տունը Տէրոջը ե-
տևէն հառաչեցին ։
3 Ան ատենը Սամուէլ Իսրայէլի
բոլոր տանը խօսեցաւ՝ ըսելով . Թէ
որ դուք ձեր բոլոր սրտովը Տէրոջը
դարձեր էք , ձեր մէջէն օտար աս-
տուածները ու Աստարովթը վեր-
ցուցէ՛ք , և ձեր սիրտերը Տէրոջը
պատրաստեցէք , ու միայն զանի-
կայ պաշտեցէք . ու անիկայ Փղըշ-
տացւոց ձեռքէն ձեզ պիտի ազա-
4 տէ ։ Եւ Իսրայէլի որդիքը Բա-
հաղիմը ու Աստարովթը վերցու-
ցին , ու միայն Տէրոջը ծառայու-
5 թիւն ըրին ։ Եւ Սամուէլ ըսաւ .
Բոլոր Իսրայէլը Մասփայի մէջ
ժողվեցէ՛ք , ու ձեզի համար Տէրոջը
6 աղօթք ընեմ ։ Եւ Մասփայի մէջ
ժողվուեցան . ու ջուր քաշեցին ,
և Տէրոջը առջևը թափեցին . ու
ան օրը ծոմ բռնեցին , և հոն ը-
սին . Տէրոջը դէմ մեղք գործե-
ցինք ։ Եւ Սամուէլ Մասփայի
մէջ Իսրայէլի որդւոցը դատաւո-
րութիւն ըրաւ ։
7 Ու երբոր Փղշտացիք լսեցին որ
Իսրայէլի որդիքը Մասփայի մէջ
ժողվուեր են , Փղշտացւոց նախա-
րարները Իսրայէլին դէմ ելան . ու
Իսրայէլի որդիքը ասիկա լսելով , Փղըշ-
8 տացւոց երեսէն վախցան ։ Եւ Իս-
րայէլի որդիքը Սամուէլին ըսին .
Անդադար մեր Տէր Աստուծոյն
աղաղակէ՛ մեզի համար , որ մեզ
9 Փղշտացւոց ձեռքէն ազատէ ։ Ու
Սամուէլ մէկ կաթնկեր գառնուկ
մը առաւ , ու զանիկայ բոլորովին
ողջակէզ ըրաւ Տէրոջը . և Սա-
մուէլ Իսրայէլի համար Տէրոջը ա-
ղաղակելով աղօթք ըրաւ . ու Տէրը
անոր պատասխան տուաւ ։
10 Ու երբոր Սամուէլ ողջակէզը կը
մատուցանէր , Փղշտացիք մօտեցան՝
որ Իսրայէլի դէմ պատերազմ ը-
նեն . և Տէրը նոյն օրը Փղշտացւոց
վրայ մեծ ձայնով մը որոտաց , ու
զանոնք խռովեցուց . ու Իսրայէլին
11 առջևը զարնուեցան ։ Եւ Իսրա-
յէլի մարդիկը Մասփայէն ելլելով՝
Փղշտացիները հալածեցին , ու մին-
չև Բեթքորի տակը զանոնք կոտ-
12 րեցին ։ Ան ատենը Սամուէլ մէկ
քար մը առաւ , և Մասփային ու
Սենին մէջտեղը կանգնեց , ու անոր
անունը Աբենեզեր կոչեց , ըսե-
լով . Տէրը մինչև աս տեղս մեզի
13 օգնեց ։ Եւ Փղշտացիք կորագը-
լուխ եղան , ու մէյմըն ալ Իսրա-
յէլի սահմանին մէջ չմտան . և
Սամուէլին բոլոր օրերը՝ Տէրոջը
14 ձեռքը Փղշտացւոց վրայ էր ։ Ու
Փղշտացիք Իսրայէլէն որչափ քա-
ղաքներ որ առեր էին , Ակկարոնէն
մինչև Գեթը , բոլորն ալ Իսրայէլին
ետ տրուեցան . ու Իսրայէլ անոնց
սահմանները Փղշտացւոց ձեռքէն
ազատեց . և Իսրայէլի ու Ամորհա-
ցւոց մէջտեղը խաղաղութիւն կար ։
15 Եւ Սամուէլ իր կենացը բոլոր
օրերուն մէջը՝ Իսրայէլը դատեց ։
16 Ու տարուէ տարի Բեթէլը , Գաղ-
գաղան ու Մասփան կ'երթար կը
պտըտէր , և բոլոր ան տեղուանքը
17 Իսրայէլը կը դատէր ։ Ու անկէ
Ռամա կը դառնար . քանզի իր
տունը հոն էր . և հոն կը դատէր
Իսրայէլը . ու հոն Տէրոջը սեղան
շինեց ։

## ԳԼ . Ը

1 Իսրայէլացիք՝ Սամուէլի որդւոցը գէշ կառավարութենէն ձանձրանալով , թագաւոր կ'ուզեն ։ 6 Սամուէլ ցաւագին սրտով աղօթք կ'ընէ , ու Աստուծմէ կը մխիթարուի . 10 և ժողովուրդին կ'իմացընէ թագաւորին վարմունքը ։ 19 Աստուած կը պատուիրէ Սամուէլին՝ որ ժողովուրդին խնդիրքը կատարէ ։

Ն . Ք . ԳՔ . Իրր 1140

ա Տես Ել . ԺԹ . 21 ։ Թուոց Դ . 5 , 15 . 20 ։ Բ Թագ . Զ . 7 ։
բ Բ Թագ . Զ . 9 ։ Մատ . Գ . 2 ։
գ Յես . ԺԸ . 14 ։ Դատ . ԺԸ . 12 ։ Ա Մն . ԺԳ . 5 . 6 ։
ա Գլ . Զ . 21 ։ Սաղ . ՃԼԲ . 6 ։
բ Բ Թագ . Զ . 4 ։
* Եբր . սրբեցին
գ Բ Օր . Լ . 2—10 ։ Գ Թագ . Ը . 48 ։ Եսայ . ԾԵ . 7 ։ Ովս . Զ . 1 ։ Յովել . Բ . 12 ։
դ Ծն . ԼԵ . 2 ։ Յես . ԻԴ . 14 , 23 ։
Իրր 1120
ե Դատ . Բ . 13 ։
զ Բ Մն . Լ . 19 ։ Յոբ . ԺԱ . 13 . 14 ։
է Բ Օր . Զ . 13 ։ Ժ . 20 ։ ԺԴ . 4 ։ Մատ . Դ . 10 ։ Ղուկ . Դ . 8 ։
ը Դատ . Բ . 11 ։
թ Դատ . Ի . 1 ։ Դ Թագ . ԻԵ . 23 ։
ժ Բ Թագ . ԺԴ . 14 ։
ի Նեեմ . Թ . 1 , 2 ։ Դան . Թ . 3 , 4 , 5 ։ Յովէլ . Բ . 12 ։
լ Դատ . Ժ . 10 ։ Գ Թագ . Ը . 47 ։ Սաղ . ՃԶ . 6 ։

Ն . Ք . ԳՔ . Իրր 1120

ա Ել . ԺԴ . 4 ։
բ Սաղ . ՂԹ . 6 ։ Երեմ . ԺԵ . 1 ։
գ Տես Յես . Ժ . 10 ։ Դատ . Դ . 15 ։ Ի . 20 ։ Գլ . Բ . 10 ։ Բ Թագ . ԻԲ . 14 , 15 ։
դ Ծն . ԻԸ . 18 ։ ԼԱ . 45 ։ ԼԵ . 14 ։ Յես . Դ . 9 ։ ԻԴ . 26 ։
ե Գլ . Դ . 1 ։
† Եբր . օգնութեան քար ։
զ Դատ . ԺԳ . 1 ։
է Գլ . ԺԴ . 5 ։
ը Հմր 6 ։ Գլ . ԺԲ . 11 ։ Դատ . Բ . 16 ։
թ Գլ . Ը . 4 ։
ժ Դատ . ԻԱ . 4 ։

Ն. ք. Ք. իրր 1112

ա Տես Դատ. ժ. 4 ։ ժբ. 14, բաղդատելով Դատ. ե. 10ին հետ ։
բ Բ Օր. ժզ. 18 ։ ա Մն. ժթ. 5 ։

իրր 1095

գ ա Մն. զ. 28 ։
դ Երեմ. իբ. 15, 16, 17 ։
ե Ել. ժը. 21 ։ ա Տիմ. գ. 3 ։ զ. 10 ։
զ Բ Օր. ժզ. 19 ։ Սաղ. ժե. 5 ։
է Հմր 19, 20 ։ Բ Օր. ժէ. 14 ։ Ովս. ժգ. 10 ։ Գործ. ժգ. 21 ։
* Եբր. դատէ ։
ը Տես Ել. ժզ. 8 ։
թ Գլ. ժ. 19 ։ ժբ. 17, 19 ։ Ովս. ժգ. 10, 11 ։
ժ Հմր 11 ։
ժա Տես Բ Օր. ժէ. 16, եւ ։ Գլ. ժ. 25 ։
ժբ Գլ. ժդ. 52 ։
ժգ Գ Թագ. իա. 7 ։ Տես Եզեկ. խզ. 18 ։
ժդ Ծնն. լէ. 36 ։

1 Ու երբոր Սամուէլ ծերացաւ, [ա]իր
որդիները Իսրայէլի վրայ [բ]դա-
2 տաւոր դրաւ ։ Եւ [գ]իր անդրանիկ
որդւոյն անունը Յովէլ, ու երկ-
րորդին անունը Աբիա էր, անոնք Բեր-
սաբէէի մէջ դատաւորութիւն կ'ը-
3 նէին ։ Եւ անոր որդիքը [դ]անոր
ճամբաներուն մէջը չքալեցին. հա-
պա [ե]ագահութեան ետևէ իյնա-
լով՝ [զ]կաշառք կ'առնէին, և իրա-
4 ւունքը կը ծռէին ։ Ու Իսրայէլի
ամէն ծերերը ժողվուեցան, ու Ռա-
5 մա Սամուէլին գացին, Եւ անոր ը-
սին. Ահա դուն ծերացեր ես, ու
քու որդիքդ քու ճամբաներուդ
մէջը չեն քալեր. ուստի հիմա [է]մեր
վրայ թագաւոր մը դիր, որ ամէն
ազգերուն պէս՝ մեզ *կառավարէ ։
6 Ու այս բանը Սամուէլին առջևը գէշ
երևցաւ, որ ըսին թէ՝ Մեզի մէկ
թագաւոր մը տուր, որ մեզ կա-
ռավարէ. ու Սամուէլ Տէրոջը ա-
7 ղօթք ըրաւ ։ Եւ Տէրը Սամուէլին
ըսաւ. Ժողովուրդին խօսքը՝ ու ա-
նոնց քեզի ամէն ըսածը մտիկ ըրէ.
քանզի [ը]անոնք քեզ չեն մերժեր,
այլ [թ]զիս կը մերժեն, որ անոնց
8 վրայ չթագաւորեմ ։ Զանոնք Ե-
գիպտոսէն հանած օրէս մինչև աս
օրս՝ ինչ որ ըրին՝ զիս թող տա-
լով, և ուրիշ աստուածներու ծա-
ռայութիւն ընելով, նոյնը քեզի
9 ալ կ'ընեն ։ Ու հիմա դուն անոնց
խօսքը մտիկ ըրէ. բայց անոնց
յայտնի վկայութիւն ըսես, ու
[ժ]անոնց վրայ իշխելու թագաւորին
վարմունքը անոնց իմացընես ։
10 Եւ Սամուէլ Տէրոջը բոլոր խօս-
քերը՝ իրմէն թագաւոր ուզող ժո-
11 ղովուրդին զրուցեց ։ Ու ըսաւ.
[ժա]Ձեր վրայ իշխելու թագաւորին
վարմունքը ասիկայ պիտի ըլլայ.
[ժբ]ձեր տղաքը պիտի առնէ, ու զանոնք
իրեն համար՝ իր կառքերուն ու
ձիերուն վրայ պիտի դնէ. և իր
կառքերուն առջևէն պիտի վազեն.
12 Ու իրեն հազարապետներ ու յիս-
նապետներ պիտի ընէ, և իր արտե-
րը պիտի հերկեն, ու հունձքերը
հնձեն, և իր պատերազմական զէն-
քերը ու կառքերուն գործիքները
13 շինեն ։ Եւ ձեր աղջիկները պիտի
առնէ, որ իւղագործ, խոհարար ու
14 հացթխաց ըլլան ։ Եւ [ժգ]ձեր ընտիր
արտերը, այգիները ու ձիթենիները
առնելով՝ իր ծառաներուն պիտի
15 տայ ։ Եւ ձեր հունձերուն ու ձեր
այգիներուն տասանորդը պիտի առ-
նէ, ու զանիկայ [ժդ]իր ներքինինե-
րուն ու ծառաներուն պիտի տայ ։
16 Եւ ձեր ծառաները ու աղախիննե-
րը, ու ձեր պինտ աղնիւ կտրիճները,
և ձեր էշերը պիտի առնէ, ու իր
17 ծառայութեանը գործածէ ։ Ձեր
հօտերուն տասանորդը պիտի առնէ,
ու դուք անոր ծառաներ պիտի ըլ-
18 լաք ։ Ան օրը դուք ձեր ընտրած
թագաւորին պատճառաւը պիտի
աղաղակէք. բայց Տէրը [ժե]ան օրը
ձեզի պատասխան պիտի չտայ ։
19 Սակայն ժողովուրդը [ժզ]Սամուէլին
խօսքը մտիկ ընել չուզելով՝ ըսին.
Չէ՛, անպատճառ մեր վրայ թա-
20 գաւոր մը ըլլայ. Ու մենք ալ [ժէ]բո-
լոր ազգերուն պէս ըլլանք, և մեր
թագաւորը մեզ կառավարէ. ա-
նիկայ մեր առջևէն ելլէ, ու մեր
†պատերազմներուն մէջ առաջնոր-
21 դութիւն ընէ" ։ Եւ Սամուէլ ժո-
ղովուրդին բոլոր խօսքերը լսեց, ու
զանոնք Տէրոջը ականջներուն զրու-
22 ցեց ։ Եւ Տէրը Սամուէլին ըսաւ.
[ժը]Անոնց խօսքը մտիկ ըրէ, ու ա-
նոնց վրայ թագաւոր մը դիր ։ Ան
ատենը Սամուէլ Իսրայէլի մարդիկ-
ներուն ըսաւ. Թող ամէն մարդ իր
քաղաքը երթայ ։

## ԳԼ. Թ

1 Սաւուղ իր հօրը էշերը գտնելու յոյս չունե-
նալով՝ 6 իր ծառային խրատովը, 11 ու աղ-
ջիկներուն առաջնորդութեամբը, 15 Աստու-
ծոյ յայտնութեանը համեմատ, 18 Սամուէ-
լին կու գայ ։ 19 Սամուէլ խնճոյքին կը հը-
րաւիրէ Սաւուղը. 25 ու անոր հետ գաղտուկ
խօսակցութիւն ընելէն ետքը՝ զանիկայ ճամ-
բայ կը հանէ ։

1 Ու Բենիամինի որդւոցմէն [ա]Կիս ա-
նունով զօրաւոր մարդ մը կար.
ու անիկայ Բենիամինեան Աֆիայի
որդւոյն Բեքովրաթի որդւոյն Սե-
րորի որդւոյն Աբիէլին որդին էր ։
2 Եւ անիկայ որդի մը ունէր, որուն
անունը Սաւուղ էր. անիկայ կըտ-
րիճ ու գեղեցիկ էր, ու Իսրայէլի
որդւոց մէջ անկէ գեղեցիկ մարդ
չկար. [բ]բոլոր ժողովուրդէն՝ ուսէն
վեր՝ երկայն էր ։
3 Եւ Սաւուղին հօրը Կիսին էշերը
կորսուեցան, ու Կիս իր որդւոյն
Սաւուղին ըսաւ. Մանչերուն մէկը
հետդ առ, ու ելի՛ր գնա՛ էշերը
4 փնտռէ ։ Ան ալ Եփրեմի լեռնէն
անցաւ, և [գ]Սաղիսա երկրէն ալ
անցնելով, զանոնք չգտան. ետքը
Սաղիմի երկրէն անցան, ու հոն ալ
չէին. անկէ Բենիամինեանց երկիրը
անցնելով, հոն ալ զանոնք չգտան ։
5 Ու երբոր անոնք ‡Սուփի երկիրը ե-
կան, Սաւուղ իր հետը եղող ման-
չուն ըսաւ. Եկուր ետ դառնանք,
չըլլայ որ իմ հայրս էշերուն հոգը
թողու, ու մեզի համար հոգայ ։
6 Բայց անիկայ անոր ըսաւ. Ահա աս
քաղաքիս մէջը [դ]Աստուծոյ մարդը
կայ, ու անիկայ պատուաւոր մարդ
մըն է. [ե]անոր ամէն ըսածը ան-

Ն. ք. Ք. իրր 1095

ժե Առակ. ա. 25, 26, 27, 28 ։ Եսա. ա. 15 ։ Միք. գ. 4 ։
ժզ Երեմ. խդ. 16 ։
ժէ Հմր 5 ։
† Եբր. պատերազմները պատերազմի ։
ժը Հմր 7 ։ Ովս. ժգ. 11 ։

ա Գլ. ժդ. 51 ։ ա Մն. ը. 33 ։ թ. 39 ։
բ Գլ. ժ. 23 ։
գ Դ Թագ. դ. 42 ։
‡ Կամ՝ Սոփիմ. տես Գլ. ա. 1 ։
դ Բ Օր. լգ. 1 ։ Դ Թագ. ժգ. 1 ։
ե Գլ. գ. 19 ։

Ն. Ք. ԳՔ. իրր 1095

շուշտ կը կատարուի. Հիմա հոն
երթանք, դուցէ մեր երթալու
7 ճամբուն մեզի իմացընէ: Եւ Սա-
ւուղ իր մանչուն ըսաւ. Բայց թէ
որ երթալու ըլլանք, Նան մարդուն
ի՞նչ տանինք. քանզի մեր ամաննե-
րէն հացը պակսեցաւ, ու Աստու-
ծոյ մարդուն տանելու ընծայ մը
չունինք. քովերնիս ի՞նչ ունինք:
8 Եւ մանչը նորէն Սաւուղին պա-
տասխան տուաւ՝ ու ըսաւ. Ահա
իմ քովս մէկ սիկղին չորրորդ մասը
արծաթ կայ. զանիկայ Աստուծոյ
մարդուն կու տամ, որ մեր ճամ-
9 բան մեզի իմացընէ: (Առաջուց
Իսրայէլի մէջ մէկ մարդ մը երբոր
Աստուծոյ հարցընելու կ'երթար,
այսպէս կ'ըսէր. Եկէք տեսանողին
երթանք. քանզի այսօր մարգարէ
ըսուածը առաջուց տեսանող կ'ը-
10 սուէր:) Եւ Սաւուղ իր մանչուն
ըսաւ. Աղէկ ըսիր, եկուր երթանք.
ու Աստուծոյ մարդուն բնակած
11 քաղաքը գացին: Ու երբոր անոնք
դար 'ի վերէն դէպ 'ի քաղաքը կ'ել-
լէին, քանի մը աղջիկներ գտան,
որ ջուր հանելու ելեր էին, ու ա-
12 նոնց ըսին. Տեսանողը հո՞ս է. Եւ
աղջիկները անոնց պատասխան տուին
ու ըսին. Հոս է. ահա քու առջեւդ
է. հիմա շուտ ըրէ, քանզի ժողո-
վուրդը այսօր բարձր տեղւոյն վը-
րայ զոհ ընելուն համար, անիկայ
13 այսօր քաղաքը եկաւ. Քաղաքը
մտնելնուդ պէս՝ զանիկայ հոն կը
գտնէք, քանի որ անիկայ բարձր
տեղը ելած չէ՝ կերակուր ուտելու
համար. քանզի մինչեւ անոր գալը՝
ժողովուրդը կերակուր չուտեր. ո-
րովհետեւ անիկայ կ'օրհնէ զոհը, ա-
նկէ ետքը հրաւիրուածները կ'ու-
տեն. հիմա ելէք. քանզի հիմա կը
14 գտնէք զանիկայ: Եւ անոնք քա-
ղաքը ելան, ու երբոր անոնք քա-
ղաքին մէջը կը մտնէին, ահա Սա-
մուէլ բարձր տեղը երթալով՝ ա-
նոնց դէմը ելաւ:
15 Եւ Սաւուղին գալէն օր մը առաջ՝
Տէրը Սամուէլին յայտներ էր,
16 ու ըսեր էր թէ՝ Վաղը աս ատեն
Բենիամինի երկրէն քեզի մէկ մարդ
մը պիտի խրկեմ, ու զանիկայ
իմ ժողովուրդիս Իսրայէլին վրայ
իշխան օծես, որ անիկայ իմ ժողո-
վուրդս Փղշտացւոց ձեռքէն ազա-
տէ. քանզի իմ ժողովուրդիս նեղու-
թեանը նայեցայ. որովհետեւ անոր
17 աղաղակը ինծի հասաւ: Ու երբոր
Սամուէլ Սաւուղը տեսաւ, Տէրը
անոր ըսաւ. Ահա ասիկա է քեզի ըսած
մարդս. ասիկայ իմ ժողովուրդիս
18 վրայ պիտի իշխէ: Եւ Սաւուղ
դրանը մէջտեղը Սամուէլին մօտե-
ցաւ, ու ըսաւ. Տեսանողին տունը
ո՞ւր է, կ'աղաչեմ ինծի ցուցուր:
19 Եւ Սամուէլ պատասխան տուաւ
Սաւուղին՝ ու ըսաւ. Տեսանողը ես
եմ, իմ առջեւէս բարձր տեղը ելէք,
քանզի այսօր ինծի հետ կերակուր
պիտի ուտէք. և վաղը քեզ կը
խրկեմ, ու բոլոր սրտիդ մէջի ե-
20 ղածը քեզի կը պատմեմ: Եւ
քու երեք օրուընէ 'ի վեր կոր-
սուած էշերուդ համար մի՛ հոգար.
քանզի անոնք գտնուած են. ու
Իսրայէլի բոլոր փափաքը որո՞ւն
է. քեզի ու քու հօրդ բոլոր տանը
21 չէ՞: Եւ Սաւուղ պատասխան
տուաւ ու ըսաւ. Ես Իսրայէլի ցե-
ղերուն պզտիկն Բենիա-
մինեան չե՞մ, ու իմ ազգատոհմս
Բենիամինի ցեղին բոլոր ազգատոհմ-
ներուն պզտիկը չէ՞. ուստի ինչո՞ւ
համար ինծի ատանկ խօսք զրուցե-
22 ցիր: Եւ Սամուէլ առաւ Սաւու-
ղը ու անոր մանչը, ու զանոնք կե-
րակուրի սրահը տարաւ, և զանոնք
կոչնականներուն գլուխը նստեցուց,
որոնք երեսուն մարդու չափ էին:
23 Ու Սամուէլ խոհարարին ըսաւ.
Բեր ան բաժինը, որն որ քեզի
տուի, ու քեզի պատուիրեցի որ
24 զանիկայ քովդ պահես: Եւ խոհա-
րարը՝ թիակը վրայինով վերցը-
նելով, զանիկայ Սաւուղին առջեւը
դրաւ: Եւ Սամուէլ ըսաւ. Ահա-
ւասիկ մնացածը. զանիկայ առջեւդ
դիր ու կեր. քանզի երբոր ըսի որ
ժողովուրդը կը հրաւիրեմ, ան վայր-
կեանէն 'ի վեր անիկայ քեզի
համար պահուած է. ու ան օրը
Սաւուղ՝ Սամուէլին հետ կերաւ:
25 Եւ բարձր տեղէն քաղաքը ի-
ջան. ու Սամուէլ իր տանը
տանիքին վրայ Սաւուղին հետ
26 խօսեցաւ: Եւ առաւօտուն կա-
նուխ ելան, ու լուսցածին պէս
Սամուէլ Սաւուղը տանիքը կան-
չեց, ու ըսաւ. Ելիր ու քեզ պի-
տի խրկեմ: Եւ Սաւուղ ելաւ.
ու ինքը և Սամուէլը մէկտեղ դուրս
27 ելան: Երբոր անոնք քաղաքին
ծայրը կ'իջնէին, Սամուէլ ըսաւ
Սաւուղին. Մանչուն ըսէ՛, որ մեր
առջեւը անցնի. (և անիկայ ան-
ցաւ.) ու հիմա դուն հոս կեցիր,
որ Աստուծոյ պատգամը քեզի իմա-
ցընեմ:

## ԳԼ. Ժ

1 Սամուէլ՝ Սաւուղը կ'օծէ, 2 ու իրեն նշաններու կանխասացութիւնը ընելով կը բաժնուի զանիկայ: 9 Սաւուղին սիրտը կը փոխուի ու կը մարգարէանայ: 14 Իր հօրեղբօրմէն կը պահէ իր թագաւոր օծուիլը: 17 Սաւուղ վիճակով թագաւոր կ'ընտրուի Մասփայի մէջ: 26 Ժողովուրդին զանազան զգացումները անոր վրայ:

Ն. Ք. ԳՔ. իրր 1095

Ն. Ք. ԳՌ. Իրր 1095

1 Եւ Սամուէլ եղին շիշը առաւ,
ու անոր գլխուն վրայ թափեց.
և զանիկայ համբուրեց, ու ըսաւ.
Չէ՞ որ Տէրը քեզ իր ժառան-
գութեանը վրայ իշխան օծեց։
2 Այսօր ինծմէ գացած ատենդ՝ Բե-
նիամինի սահմանը՝ Սելսահի մէջ՝
Ռաքէլին գերեզմանին քովը երկու
մարդ պիտի գտնես, ու քեզի պիտի
ըսեն. Գտնուեցան այն էշերը՝ ո-
րոնք փնտռելու գացած էիր. և ա-
հա քու հայրդ էշերուն հոգը թո-
ղուց, ու ձեզի համար կը հոգայ,
ու կ՚ըսէ. Տղուս համար ի՞նչ ը-
3 նեմ։ Ու երբոր անկէ անդին եր-
թաս, և Թաբօրի կաղնին հասնիս,
հոն իրեք մարդ քեզի պիտի հանդի-
պին, որոնց մէկը իրեք ուլ, մէկը
իրեք հացի նկանակ ու մէկն ալ
տիկ մը գինի տանելով՝ Աստու-
4 ծոյ կ՚ելլեն դէպ 'ի Բեթէլ։ Ու
քու ողջութիւնդ հարցնելով,
քեզի երկու հաց պիտի տան. դուն
ալ անոնց ձեռքէն պիտի առնես։
5 Անկէ ետքը Աստուծոյ բլուրը պի-
տի երթաս, ուր որ Փղշտացւոց
բերդապահ զօրքը կը կենայ. ու եր-
բոր հոն քաղաքը մտնես, բարձր
տեղէն իջնող մարգարէից գունդի
մը պիտի հանդիպիս, որոնք ի-
րենց առջևէն տաւիղ, թմբուկ,
սրինգ ու քնար ունենալով՝ մար-
6 գարէութիւն պիտի ընեն։ Եւ
քու վրադ Տէրոջը Հոգին պիտի
գայ, ու անոնց հետ մարգարէու-
թիւն պիտի ընես. և դուն պիտի
փոխուիս, ուրիշ մարդ մը պիտի
7 ըլլաս։ Ու երբոր աս նշանները
քու վրադ գան, ձեռքէդ եկածը
ըրէ. քանզի Աստուած քու հետդ
8 է։ Եւ ինծմէ առաջ Գաղգաղա
իջնես. և ահա ես քեզի պիտի իջ-
նեմ, ողջակէզներ ու խաղաղու-
թեան զոհեր մատուցանելու հա-
մար. և դուն եօթը օր սպասես,
մինչև որ ես քեզի գամ, ու քու
ընելու գործդ քեզի իմացընեմ։
9 Ու երբոր անիկայ իր կռնակը
դարձուց՝ Սամուէլին քովէն եր-
թալու համար, Աստուած անոր
մէկ ուրիշ սիրտ մը տուաւ. և նոյն
օրը աս բոլոր նշանները կատարուե-
10 ցան։ Ու երբոր հոն բլուրը ե-
կան, ահա մարգարէից գունդ մը
անոր առջևը ելաւ. և անոր վրայ
Աստուծոյ Հոգին եկաւ, ու ա-
նոնց մէջը մարգարէութիւն ըրաւ։
11 Եւ ամէն անոնք որ զանիկայ ա-
ռաջուց կը ճանչնային, երբոր տե-
սան որ անիկայ մարգարէներուն
հետը մարգարէութիւն կ՚ընէ, ժո-
ղովուրդը իրարու ըսին. Աս ի՞նչ
բան է՝ որ Կիսին որդւոյն հանդի-
պեր է. միթէ Սաւո՞ւղն ալ մար-
12 գարէներուն մէջն է։ Եւ անտե-
ղի մարդիկներուն մէկը պատաս-
խան տուաւ ու ըսաւ. Հապա ա-
նոնց հայրը ո՞վ է։ Անոր համար
ասիկայ մէկ առակ մը եղաւ. Մի-
թէ Սաւո՞ւղն ալ մարգարէներուն
13 մէջն է։ Ու երբոր մարգարէու-
թիւն ընելը լմնցուց, բարձր տեղը
եկաւ։
14 Եւ Սաւուղին հօրեղբայրը՝ անոր
ու անոր մանչուն ըսաւ. Ո՞ւր գա-
ցիք։ Ու անիկայ ըսաւ. Էշերը
փնտռելու. բայց երբոր տեսանք որ
15 չկան, Սամուէլին գացինք։ Եւ
Սաւուղին հօրեղբայրը ըսաւ. Սա-
մուէլը ձեզի ի՞նչ զրուցեց, պատմէ
16 ինծի։ Ու Սաւուղ իր հօրեղբօրը
ըսաւ. Էշերուն գտնուիլը մեզի
յայտնապէս իմացուց։ Բայց թա-
գաւորութեան վրայով Սամուէլին
ըսած խօսքը անոր չյայտնեց։
17 Եւ Սամուէլ՝ ժողովուրդը Մաս-
փայի մէջ Տէրոջը առջևը ժող-
18 վեց։ Ու Իսրայէլի որդւոցը ըսաւ.
Իսրայէլին Տէր Աստուածը այս-
պէս կ՚ըսէ. Ես Իսրայէլը Եգիպ-
տոսէն հանեցի, ու ձեզ Եգիպտա-
ցւոց ձեռքէն՝ և ձեզի նեղութիւն
տուող բոլոր թագաւորներուն
19 ձեռքէն ազատեցի։ Ու դուք
այսօր ձեր Աստուածը մերժեցիք,
որ ձեր ամէն չարիքներէն ու նեղու-
թիւններէն ձեզ ազատեց, ու ա-
նոր ըսիք. Անպատճառ մեր վրայ
մէկ թագաւոր մը դիր։ Ուրեմն
հիմա ձեր ցեղերովը ու հազա-
րաւորներովը Տէրոջը առջևը կայ-
20 նեցէք։ Ու երբոր Սամուէլ Իս-
րայէլին ամէն ցեղերը մօտեցուց,
վիճակը Բենիամինի ցեղին ելաւ։
21 Ետքը Բենիամինի ցեղը ազգա-
տոհմներովը մօտեցուց, ու վիճակը
Մատրիին ազգատոհմին ելաւ. ետ-
քը Կիսի որդւոյն Սաւուղին ելաւ.
բայց երբոր զանիկայ փնտռեցին,
22 անիկայ չգտնուեցաւ։ Եւ նորէն
Տէրոջը հարցուցին, թէ Արդեօք
ան մարդը հոս կու գա՞յ. ու Տէրը
ըսաւ. Ահա անիկայ կարասիներուն
23 մէջտեղը պահուած է։ Եւ վազե-
լով՝ զանիկայ անկէ առին, ու
ժողովուրդին մէջտեղը կայնեցաւ.
և բոլոր ժողովուրդէն՝ ուսէն վեր՝
24 երկայն էր։ Ու Սամուէլ բոլոր
ժողովուրդին ըսաւ. Տէրոջը
ընտրած մարդը տեսա՞ք, որ բոլոր
ժողովուրդին մէջը անոր պէս չկայ.
և բոլոր ժողովուրդը աղաղակեց՝
25 ու ըսաւ. Կեցցէ արքայ։ Եւ Սա-
մուէլ թագաւորութեան կանոն-
ները ժողովուրդին զրուցեց, ու զա-
նոնք գիրքի մը մէջ գրեց, ու Տէ-

ա Գլ. Թ. 16. Ժզ. 13. Դ Թագ. Թ. 3. 6.
բ Սաղ. Ր. 12.
գ Օր. ԼԲ. 9. Սաղ. ՀԸ. 71.
դ Գոր. Ժղ. 21.
ե Ծնն. ԺԲ. 25.
զ Ծն. ԼԵ. 19. 20.
է Ծն. ԻԸ. 22. ԼԵ. 1. 3. 7.
ը Դատ. ԺԲ. 15.
թ Հմր 10.
ժ Գլ. ԺԳ. 3.
ի Գլ. Թ. 12.
լ Եւ. ԺԵ. 20. 21. Դ Թագ. Գ. 15. Ա Կոր. ԺԴ. 1.
խ Թւ. ԺԱ. 25. Գլ. ԺԶ. 13.
ծ Հմր 10.
Գլ. ԺԹ. 23. 24.
կ Եւ. Գ. 8. Ղուկ. Ա. 12.
հ Դատ. Թ. 33.
ձ Դատ. Զ. 12.
ղ Գլ. ԺԱ. 14. 15. ԺԳ. 4.
ճ Գլ. ԺԳ. 8.
մ Հմր 5.
յ Գլ. ԺԹ. 20.
ն Հմր 6.

Ն. Ք. ԳՌ. Իրր 1095
Գլ. ԺԹ. 24. Մատ. ԺԳ. 54. 55. Յով. Է. 15. Գոր. Դ. 13.

1095
ա Գլ. Է. 5. 6.
բ Դատ. ԺԱ. 11. Ի. 1. Գլ. ԺԱ. 15.
գ Դատ. Զ. 8. 9.
* Եբր. Թագաւորութիւններուն
դ Գլ. Ը. 7. 19. ԺԲ. 12.
ե Յես. Է. 14. 16. 17. Գոր. Ա. 24. 26.
զ Գլ. ԻԳ. 2. 4. 10. 11.
է Գլ. Թ. 2.
ը Բ Թագ. ԻԱ. 6.
թ Գ Թագ. Ա. 25. 39. Դ Թագ. ԺԱ. 12.
ժ Եւ Բ Օր. ԺԷ. 14. 15. Գլ. Ը. 11.

Ն. Ք. ԶՔ.
1095

բոլոր առջևը դրաւ . և Սամուէլ
բոլոր ժողովուրդը արձակեց , ու
26 ամէն մարդ իր տունը էրթայ ։ Սա-
ւուղն ալ Գաբաա իր տունը
գնաց ու խել մը զօրաւոր մար-
դիկներ անոր հետը գացին , որոնց
27 սիրտը Աստուած դրդեց ։ Բայց
չար մարդիկները ըսին . Ասիկայ
մեզ ի՞նչպէս պիտի ազատէ . ուստի
զանիկայ քամահրեցին , ու անոր
ընծայ մը չտարին . բայց անիկայ
լուռ կեցաւ ։

## ԳԼ. ԺԱ

1 Նաաս Գաղաադու Յաբիսի բնակչացը նա-
խատալից պայման մը կ'առաջարկէ ։ 4 Անոնք
ալ պատգամաւորներ կը խրկեն , ու Սաւուղին
ձեռօքը կ'ազատուին ։ 12 Ասոր վրայ Սաւուղ
կը զօրանայ , ու իր թագաւորութիւնը կը
հաստատուի ։

1 Ու Ամմոնացի Նաասը ելաւ , ու
Գաղաադու Յաբիսի դէմ բա-
նակեցաւ . և Յաբիսի բոլոր բնա-
կիչները Նաասին ըսին . Մեզի հետ
դաշնակցութիւն ըրէ , ու քեզի
2 ծառայենք ։ Բայց Ամմոնացի Նա-
ասը անոնց ըսաւ . Ձեզի հետ աս
պայմանով դաշնակցութիւն կ'ը-
նեմ որ ձեր ամենուն աջ կողմի
աչքը փորեմ , ու աս բանը բոլոր
Իսրայէլին վրայ նախատինք դը-
3 նեմ ։ Եւ Յաբիսի ծերերը անոր ը-
սին Մեզի եօթը օր ժամանակ
տուր , որ Իսրայէլին բոլոր սահ-
մանները պատգամաւորներ խըր-
կենք , ու թէ որ մեզ ազատող
չըլլայ , ան ատենը քեզի "անձնա-
տուր կ'ըլլանք" ։
4 Ուստի պատգամաւորները Սա-
ւուղին Գաբաան գացին , և ժողո-
վուրդին ականջներուն աս խօսքերը
ըսուցեցին . ու բոլոր ժողովուրդը
5 ձայներնին վերցընելով լացին ։ Եւ
ահա Սաւուղ արտէն կու գար եր
եզներուն ետևէն . ու Սաւուղ ը-
սաւ . Ժողովուրդին ի՞նչ եղաւ որ
կու լան . ու Յաբիսի բնակչացը
6 խօսքերը անոր պատմեցին ։ Եւ աս
խօսքերը որ լսեց , Աստուծոյ Հոգին
Սաւուղին վրայ եկաւ , ու անոր
բարկութիւնը խիստ բորբոքեցաւ ։
7 Եւ զոյգ մը եզ առաւ , ու զանոնք
կտոր կտոր ըրաւ , ու պատգամա-
ւորներուն ձեռքովը Իսրայէլին բոլոր
սահմանները խրկեց ըսելով . Ով
որ Սաւուղին ետևէն ու Սամուէլին
ետևէն չգայ , անոր եզներուն այս-
պէս պիտի ընեն ։ Եւ ժողովուր-
դին վրայ Տէրոջը վախը ինկաւ . ու
ամէնքը մէկ մարդու մը պէս ելան ։
8 Եւ Սաւուղ Բեզեկի մէջ համրեց
զանոնք ու Իսրայէլի որդիքը ի-
րեք հարիւր հազար , և Յուդայի
9 մարդիկը երսուն հազար էին ։ Ու

−Դատ. ի. 14 ։ Գլ. ժա. 4 ։
+Գլ. ժա. 12 ։
+Բ Օր. ժգ. 13 ։
օ Բ Թագ. Ը. 2 ։ Գ Թագ. Դ. 21 ։ Ժ. 25 ։ Բ Մն. ԺԷ. 5 ։ Սաղ. ՀԲ. 10 ։ Մատ. Բ. 11 ։
−Գլ. ԺԲ. 12 ։
Բ Դատ. Ի. 8 ։
Գ Ծն. ԻԶ. 28 ։ Ել. ԻԶ. 32 ։ Գ Թագ. Ի. 34 ։ Յոբ. ԻԱ. 4 ։ Եզ. ԺԷ. 13 ։
Դ Ծն. ԼԴ. 14 ։ Գլ. ԺԼ. 26 ։
* Եբր. Կ'ելլենք ։
Ե Գլ. Ժ. 26 ։ ԺԵ. 34 ։ Բ Թագ. ԻԱ. 6 ։
Զ Դատ. Բ. 4 ։ ԻԱ. 2 ։
Է Դատ. Գ. 10 ։ Զ. 34 ։ ԺԱ. 29 ։ ԺԴ. 25 ։ ԺԶ. 6 ։ Գլ. Ժ. 10 ։ ԺԶ. 13 ։
Ը Դատ. ԺԹ. 29 ։
Թ Դատ. Իա. 5 . 8 ։ 10 ։
Ժ Դատ. Ի. 1 ։
Ի Դատ. Ա. 5 ։
Լ Բ Թագ. ԻԴ. 9 ։

եկող պատգամաւորներուն ըսին .
Գաղաադու Յաբիսի բնակիչներուն
այսպէս ըսէք . վաղը երբոր արևը
տաքնայ՝ ձեզի ազատութիւն պիտի
ըլլայ ։ Ուստի երբոր պատգամա-
ւորները գացին , և Յաբիսի բնա-
կիչներուն "աս բանը" իմացուցին , ա-
10 նոնք ուրախացան ։ Ու Յաբիսի
բնակիչները ըսին Ամմոնացիներուն .
Վաղը ձեզի անձնատուր կ'ըլլանք ,
ու ձեր աչքերուն ինչ որ հաճելի
11 ըլլայ , ան ըրէք մեզի ։ Եւ հետե-
ւեալ օրը Սաւուղ ժողովուրդը
իրեք գունդի բաժնեց , ու առա-
ւօտեան պահուն բանակին մէջը
մտան . ու մինչև որ օրը տաքցաւ ,
Ամմոնացիները զարկին . և մնա-
ցածները այնպէս ցրուեցան՝ որ ա-
նոնցմէ երկու հոգի մէկտեղ չմնաց ։
12 Ան ատենը ժողովուրդը Սամուէ-
լին ըսաւ . Սաւուղը մեր վրայ
թագաւոր պիտի ըլլայ՝ ըսողը ո՞վ
է . անոնց մարդիկները տուէք որ
13 մեռցընենք ։ Ու Սաւուղ ըսաւ .
Այսօր մարդ մը չմեռցուի . քան-
զի այսօր Տէրը Իսրայէլին համար
փրկութիւն ըրաւ .
14 Եւ Սամուէլ ժողովուրդին ը-
սաւ . Եկէք Գաղգաղա երթանք ,
ու հոն թագաւորութիւնը նորէն
15 հաստատենք ։ Ուստի բոլոր ժողո-
վուրդը Գաղգաղա գացին , ու հոն
Գաղգաղայի մէջ Տէրոջը առջևը
Սաւուղը թագաւոր ըրին . և հոն
Տէրոջը առջևը խաղաղութեան
զոհեր մատուցին ու Սաւուղ և
բոլոր Իսրայէլի մարդիկը հոն մեծ
ուրախութիւն ըրին ։

## ԳԼ. ԺԲ

1 Սամուէլ իր անմեղութեանը համար կը վկա-
յէ 6 ու ժողովուրդին ապերախտութիւնը կը
յանդիմանէ . 16 ու իր աղօթքովը հունձքի
ժամանակ որոտում ու անձրև բերելով՝ զա-
նոնք կը վախցընէ . 20 և կը մխիթարէ զա-
նոնք Աստուծոյ ողորմութիւնը յիշելով .

1 Ու Սամուէլ բոլոր Իսրայէլին ը-
սաւ . Ահա դուք ինծի ինչ որ
ըսուցեցիք , ես ձեր խօսքը մտիկ
ըրի , ու ձեր վրայ թագաւոր դրի ։
2 Եւ ահա հիմա ձեր առջևէն թա-
գաւորը կ'երթայ . բայց ես ծե-
րացայ , ու մազերս ճերմկցան
և ահա իմ որդիքս ձեզի հետ են
ու ես իմ մանկութենէս մինչև աս
3 օրս ձեր առջևը քալեցի ։ Ահա ես
հոս կայներ եմ . Տէրոջը առջևը ու
անոր օծեալին առջևը ինծի համար
յայտնապէս ըսուցեցէք . թէ ուրուն
որու՞ն եզը առի , ու որու՞ն էշը առի .
որու՞ն զրկանք կամ անիրաւութիւն
ըրի , ու որու՞ն ձեռքէն կաշառք ա-
ռի . և անով իմ աչքերս գոցեցի .
4 ու ես ձեզի ետ դարձընեմ ։ Եւ ը-

Ն. Ք. ԶՔ.
1095

Ե Հմր 3 ։
Ժ Տես Դտ. Լա. 11 ։
Ի Դատ. Է. 16 ։
Հ Գլ. Ժ. 27 ։
Ձ Տես Ղւ. ԺԹ. 27 ։
Ղ Բ Թագ. ԺԹ. 22 ։
Ճ Ել. ԺԴ. 13 . 30 ։ Գլ. ԺԹ. 5 ։
Մ Գլ. Ժ. 8 ։
Յ Գլ. Ժ. 17 ։
Ն Գլ. Ժ. 8 ։

− Գլ. Ը. 5 . 19 . 20 ։
Բ Գլ. Ժ. 24 ։ ԺԱ. 14 ։ 15 ։
Գ Թուոց ԻԷ. 17 ։ Գլ. Ը. 20 ։
Դ Գլ. Ը. 1 . 5 ։
Ե Հմր 5 ։ Գլ. Ժ. 1 ։ Իդ. 6 ։ Բ Թագ. Ա. 14 . 16 ։
Զ Թուոց ԺԶ. 15 ։ Գործ. Ի. 33 ։ Ա Թես. Բ. 5 ։
Է Բ Օր. ԺԶ. 19 ։

Ն. Ք. ԴՖ. 1095

սին մեզի զրկանք կամ անիրա-
ւութիւն ըրած չես, ու բնաւ մար-
5 դու ձեռքէ բան մը առած չես։ Եւ
անիկայ ըսաւ անոնց. Այսօր Տէրը
ու անոր օծեալը ձեզի վկայ ըլլան,
որ դուք իմ ձեռքիս մէջը բան
մը չգտաք։ Եւ անոնք ըսին. Վկայ
6 ըլլան։ Ան ատենը Սամուէլ ժողո-
վուրդին ըսաւ. Մովսէսը ու Ա-
հարոնը ընտրողը, և ձեր հայրերը
Եգիպտոսի երկրէն հանողը Տէրն է։
7 Ու հիմա առաջ եկէք, և ձեզի հետ
Տէրոջը առջևը քննեմ ան բոլոր
արդարութիւնները՝ որ Տէրը ձեզի
8 ու ձեր հայրերուն ըրաւ։ Երբոր
Յակոբ Եգիպտոս գնաց, հոն ձեր
հայրերը Տէրոջը աղաղակեցին. և
Տէրը Մովսէսը ու Ահարոնը ղըր-
կեց, որոնք ձեր հայրերը Եգիպտո-
սէն դուրս հանեցին ու զանոնք աս
9 տեղս բնակեցուցին։ Բայց անոնք
իրենց Տէր Աստուածը մոռցան
անիկայ ալ զանոնք Հասորի զօրա-
գլուխը եղող Սիսարային ձեռքը
ու Փղշտացւոց ձեռքը և Մովա-
բի թագաւորին ձեռքը մատնեց,
ու անոնց հետ պատերազմ ըրին։
10 Եւ Տէրոջը աղաղակելով ըսին.
Մենք մեղք գործեցինք. քանզի
Տէրը թողուցինք, և Բահաղիմին
ու Աստարովթին ծառայութիւն
ըրինք. և հիմա մեզ մեր թշնամի-
ներուն ձեռքէն ազատէ, ու քեզի
11 ծառայութիւն պիտի ընենք։ Ու ա-
տի Տէրը Յերոբաաղը, Բեդանը,
Յեփթայէն ու Սամուէլը ղրկեց
և ձեր չըջակայ թշնամիներուն ձեռ-
քէն ձեզ ազատեց, ու ապահովու-
12 թեամբ բնակեցաք։ Ու երբոր տե-
սաք որ Ամմոնացւոց թագաւորը
Նաաս ձեր վրայ կու գայ, ինծի
ըսիք. Չէ, անպատճառ մեր վրայ
թագաւոր մը ըլլայ. թէպէտև ձեր
թագաւորը ձեր Տէր Աստուածն
13 էր։ Եւ հիմա ահա ան թագա-
ւորը, որն որ ընտրեցիք ու ուզե-
ցիք. ահա Տէրը ձեր վրայ թա-
14 գաւոր մը դրաւ։ Թէ որ Տէ-
րոջմէ վախնաք, ու անոր ծառա-
յութիւն ընէք, և անոր խօսքին
հնազանդ ըլլաք, ու Տէրոջը պա-
տուիրանքին դէմ չկենաք, ան ա-
տենը թէ դուք և թէ ձեր թագա-
ւորը՝ որ ձեր վրայ կը թագաւորէ
ձեր Տէր Աստուծոյն ետևէն պիտի
15 երթաք։ Բայց թէ որ Տէրոջը
խօսքին հնազանդութիւն չընէք ու
Տէրոջը հրամանին դէմ կենաք, ան
ատենը Տէրոջը ձեռքը ձեր վրայ
ու ձեր հայրերուն վրայ պիտի ըլ-
16 լայ։ Եւ հիմա կայնեցէք ու տե-
սէք ան մեծ բանը՝ որ Տէրը ձեր աչ-
17 քերուն առջևը պիտի ընէ։ Այսօր
ցորենի հունձքի ժամանակ չէ։
Ես Տէրոջը պիտի աղաղակեմ. և
անիկայ որոտում ու անձրև պիտի
ղրկէ, որ հասկընաք ու տեսնէք
թէ դուք Տէրոջը առջևը մեծ
չարութիւն ըրիք՝ ձեզի թագաւոր
մը ուզելով։
18 Ան ատենը Սամուէլ Տէրոջը ա-
ղաղակեց, ու Տէրը նոյն օրը որո-
տում ու անձրև տուաւ. և բոլոր
ժողովուրդը Տէրոջմէն ու Սամուէ-
19 լէն խիստ վախցաւ։ Ու բոլոր ժո-
ղովուրդը Սամուէլին ըսաւ. Քու
Տէր Աստուծոյդ աղօթք ըրէ քու
ծառաներուդ համար՝ որ չմեռնինք.
քանզի մեր ամէն մեղքերուն վրայ
աս չարութիւնն ալ աւելցուցինք՝
20 որ մեզի թագաւոր ուզեցինք։ Եւ
Սամուէլ ժողովուրդին ըսաւ. Մի
վախնաք. դուք ըրիք աս բոլոր չա-
րութիւնը, սակայն Տէրոջմէ
մի խոտորիք, ու բոլոր սրտովնիդ
21 Տէրոջը ծառայութիւն ըրէք։ Եւ
հոն մի խոտորիք. քանզի ունայն
բաներու ետևէ գացած կ'ըլլաք, որ
անոնք ձեզի օգուտ մը ընելու ու
ձեզ ազատելու կարող չեն, ինչու
22 որ անոնք ունայն են։ Քանզի Տէ-
րը իր մեծ անունին համար՝ իր
ժողովուրդը չթողուր. որովհետև
Տէրը ուզեց ձեզ իրեն ժողո-
23 վուրդ ընել։ Բայց ես, բաւ լի-
յի որ Տէրոջը դէմ մեղք գոր-
ծեմ ու ձեզի համար աղօթք ընե-
լէն ետ կենալով. հապա ես ձեզի
բարի ու շիտակ ճամբան պիտի
24 սորվեցընեմ։ Միայն թէ Տէրոջ-
մէն վախցէք, և ճշմարտութեամբ
ու բոլոր սրտովնիդ անոր ծառայու-
թիւն ըրէք. քանզի նայեցէք որ ա-
նիկայ ձեզի համար ինչ մեծ բաներ
25 ըրաւ։ Իսկ թէ որ չարութիւն ը-
նելը շարունակէք, թէ դուք և
թէ ձեր թագաւորը պիտի կոր-
սուիք։

## ԳԼ. ԺԳ

1 Սաւուղին ընտրած զօրքը. 3 Անիկայ Եբրայեցիները Գաբաայի մէջ կը կանչէ Փղշտացւոց դէմ, որոնց պահապան զօրքերը զարկեր էր Յովնաթան։ 5 Փղշտացւոց անթիւ զօրքը։ 6 Իսրայելացւոց խռովութիւնը։ 8 Սաւուղ համբերանքով Սամուէլի համար սպասելէն զոհ կը մատուցանէ։ 11 Սամուէլ կը յանդիմանէ զանիկայ։ 17 Փղշտացւոց երեք աւարառու գունդերը։ 19 Փղշտացւոց վարպետութեամբ փարունելովը Իսրայէլի մէջ դարբին չգտնուիր

1 Երբոր աս բաները եղան՝ Սաւուղ
մէկ տարուան թագաւոր էր
ու երբոր Իսրայէլի վրայ երկու
տարի թագաւորութիւն ըրաւ
2 Սաւուղ Իսրայէլէն իրեք հազար
մարդ ընտրեց իրեն համար. երկու
հազարը Սաւուղին հետ Մաքմաս
ու Բեթէլի լեռն էին, և հազարն

Ն. Ք. ԴՖ. 1095

1093

Ն. Ք. ԳՖ. 1093

ու Յովնաթանին հետ Բենիամի-
նի Գաբաան էր. ու մնացած ժո-
ղովուրդը ամէն մարդ իր վրանը
խրկեց.
3 Եւ Յովնաթան Գաբայի մէջ ե-
ղող Փղշտացւոց պահապան զօր-
քերը զարկաւ. ու Փղշտացիք լսե-
ցին. Ան ատենը Սաւուղ բոլոր
երկրին մէջը փող հնչեցրնել տուաւ.
ըսելով. Եբրայեցիները թող լսեն։
4 Եւ բոլոր Իսրայէլը լսեց որ Սա-
ւուղ Փղշտացւոց պահապան զօր-
քերը զարկաւ. և Իսրայէլ Փղշ-
տացւոց առջեւ ատելի եղաւ.
ու ժողովուրդը Գաղգաղայի մէջ
5 Սաւուղին քովը ժողվուեցան. Եւ
Փղշտացիք ալ ժողվուեցան որ
Իսրայէլի դէմ պատերազմ ընեն և
անոնք երեսուն հազար կառք ու
վեց հազար ձիաւոր ունէին և ժո-
ղովուրդը ծովուն եզերքը եղող ա-
ւազին չափ շատ էր. ու ելան՝
և Բեթաւանին արեւելեան կողմը
6 Մաքմասի մէջ բանակեցան. Ու
Իսրայէլի մարդիկները դիրենք նե-
ղութեան մէջ տեսան. և ժողո-
վուրդը խիստ չփոթած ըլլալով՝
այրերու. թուփերու. ժայռե-
րու. աշտարակներու ու փոսերու
7 մէջ պահուեցան. Ու Եբրայեցիք
Յորդանանէն Գադի ու Գաղաադի
երկիրը անցան. բայց Սաւուղ դեռ
Գաղգաղայի մէջ էր ու բոլոր ժո-
ղովուրդը դողալով անոր ետեւէն
կ՚երթային.
8 Եւ անիկայ Սամուէլին որոշած
ժամանակին չափ եօթը օր սպա-
սեց. բայց Սամուէլ Գաղգաղա
չգալուն համար ժողովուրդը ա-
9 նոր քովէն ցրուեցաւ. Ու Սաւուղ
ըսաւ. Ողջակէզը և խաղաղութեան
զոհը ինծի մօտ բերէք. ու ինքը
10 ողջակէզը մատուց. Ու երբոր ա-
նիկայ ողջակէզը մատուցանելը լը-
մնցուց, ան ատենը Սամուէլ ե-
կաւ. և Սաւուղ ելաւ զանիկայ
11 դիմաւորելու ու բարեւելու. Ու
Սամուէլ ըսաւ. Ի՞նչ ըրիր։ Եւ
Սաւուղ ըսաւ. Տեսայ որ ժողո-
վուրդը իմ քովէս կը ցրուի. ու
դուն ալ որոշած օրերուդ մէջ չե-
կար, ու Փղշտացիք Մաքմասի մէջ
12 ժողվուած են, Ու ըսի. Փղշտացիք
հիմա իմ վրաս Գաղգաղա պիտի
իջնեն, ու ես Տէրոջը առջեւ ա-
ղօթք ըրած չեմ. ուստի համար-
ձակութիւն ընելով ողջակէզը մա-
13 տուցի։ Ու Սամուէլ ըսաւ Սաւու-
ղին. Յիմարութիւն ըրիր, որ
քու Տէր Աստուծոյդ քեզի պա-
տուիրած պատուիրանքները չպա-
հեցիր. քանզի հիմա Տէրը քու
թագաւորութիւնդ Իսրայէլի վրայ
մինչեւ յաւիտեան պիտի հաստա-
14 տէր. Բայց հիմա քու թագաւո-
րութիւնդ հաստատ պիտի չըլլայ.
Տէրը իրեն համար իր սրտին հա-
ճեմատ մարդ մը կը փնտռէ, որն
որ Տէրը իշխան պիտի կարգէ իր
ժողովուրդին վրայ. քանզի դուն
Տէրոջը քեզի պատուիրած հրամանը
չպահեցիր.
15 Ետքը Սամուէլ ելաւ, ու Գաղ-
գաղայէն Բենիամինի Գաբաան
գնաց։ Եւ Սաւուղ իր քովը գըտ-
նուող ժողովուրդը համրեց, ու
վեց հարիւրի չափ մարդ էին.
16 Ու Սաւուղ և անոր որդին Յովնա-
թանը ու անոնց հետ գտնուող
մարդիկները՝ Բենիամինի Գաբաան
կը նստէին ու Փղշտացւոց բա-
նակը Մաքմասի մէջ էր.
17 Եւ Փղշտացւոց բանակէն իրեք
գունդ աւարառու ելաւ. գունդին
մէկը՝ դէպ ի Եփրայի ճամբան՝
18 Սուաղի երկիրը դարձաւ. Եւ
գունդին մէկը դէպ ի Բեթորոնի
ճամբան դարձաւ. ու մէկալ գուն-
դը դէպ ի անապատը դարձաւ
Սեբոյիմի հովիտը նայող սահմա-
նին ճամբան բռնեց.
19 Եւ Իսրայէլի բոլոր երկրին մէջ
մէկ դարբին մը չէր գտնուեր.
քանզի Փղշտացիք ըսեր էին թէ՝
Չըլլայ որ Եբրայեցիք սուր կամ
20 նիզակ շինեն. Ու բոլոր Իսրայէ-
լացիք ամէն մէկը իր խոփը, բա-
հը, տապարը ու բահը շիտկելու
համար, Փղշտացւոց երկիրը կ՚իջնէ-
21 ին. Բայց խոփերուն, բահերուն,
եռաժանի գործիքներուն ու տա-
պարներուն համար, և խթանները
սրելու համար խարտոցներ ունէին.
22 Ուստի անանկ եղաւ որ պատերազ-
մին օրը՝ Սաւուղին ու Յովնաթա-
նին հետ եղող բոլոր ժողովուրդին
ձեռքը սուր կամ նիզակ չէր գըտ-
նուեր. միայն Սաւուղին ու անոր
որդւոյն Յովնաթանին քովը կը
գտնուէր։
23 Ու Փղշտացւոց պահապան զօր-
քը Մաքմասի կիրճը ելաւ։

## ԳԼ. ԺԴ

1 Յովնաթան՝ առանց իր հօրը, քահանային և ժողովուրդին գիտնալուն՝ կ՚երթայ. ու հրաշքով մը Փղշտացւոց պահապան զօրքերը կը զարնէ. 15 որոնց վրայ Աստուծոյ վախը իյնալով՝ կը սկսին մէկզմէկ զարնել. 17 Սաւուղ՝ քահանային պատասխանին չսպասելով, թշնամեաց վրայ կը յարձակի. 21 Իսկ գերի բռնուած Իսրայէլացիները, ու պահուըտածներն ալ անոր հետ կը միանան Փղշտացւոց դէմ. 24 Սաւուղին անմտաբար երդում ընել տալովը՝ յաղթութիւնը ետ կը մնայ. 32 Սաւուղ ժողովուրդը կը զսպէ արիւն ուտելէն. 35 Սեղան մը կը շինէ. 36 Յովնաթան վիճակով կը բռնուի. բայց ժողովուրդը կ՚ազատէ զանիկայ. 47 Սաւուղին զօրութիւնը ու անոր գերդաստանը.

Ա. Գլ. Ժ. 26. Բ. Գլ. Ժ. 5. Դ. Դտ. Ժ. 30. Եւ. Ժ. 21. Է. Դատ. Զ. 2. Ե. Գլ. Ժ. 8. Ը. Սամ. տալ. պատեհը. Հ. Գլ. ԺԵ. 9. Է. Գլ. ԺԵ. 11. Ի. Գլ. ԺԵ. 28. Բ. Սամ. ԺԹ. 20. Գործ. ԺԳ. 22. Ժ. Գլ. ԺԴ. 2. Կ. Կամ՝ Գաբաան հմը. 3. Լ. Յես. ԺԸ. 23. Ծ. Յես. ԺԶ. 3. ԺԸ. 13. 14. Ծ. Նեեմ. ԺԱ. 34. Կ. Տես Բ. Թագ. ԻԴ. 14. Երեմ. ԻԴ. 1. Հ. Դատ. Ե. 8. Ձ. Գլ. ԺԴ. 1. 4.

Ն. Ք. գՔ. իրր 1087

1 Եւ եղաւ որ՝ մէկ օր մը Սաւուղին
որդին Յովնաթանը իր զէնքերը
կրող մանչուն ըսաւ. Եկուր, ան-
դիի կողմը եղող Փղշտացւոց պա-
հապան զօրքին անցնինք. բայց իր
2 հօրը չիմացուց։ Ու Սաւուղ Գա-
բաային ծայրը՝ Մագրոնի մէջ ե-
ղող նռնենիին տակը կը նստէր. և
անոր հետ եղող ժողովուրդը վեց
3 հարիւր մարդու չափ էր։ Ու Հե-
ղիի որդւոյն Փենէհէսի որդւոյն
Իքաբօթին եղբօրը Աքիտովբին
որդին Աքիան՝ Սելովի մէջ Տէ-
րոջը քահանան էր, որ եփուտ կը
հագնէր. ու ժողովուրդը Յովնա-
4 թանին երթալը չէր գիտեր։ Եւ
ան կիրճերուն մէջը, ուսկից որ
Յովնաթան Փղշտացւոց պահա-
պան զօրքին անցնիլ կ՚ուզէր, մէկ
կողմանէ մէկ քարաժայռ մը՝ ու
մէկալ կողմանէ մէկ քարաժայռ մը
կար. որոնց մէկուն անունը Բոզէս՝
5 ու մէկալին անունը Սենա էր։ Աս
քարաժայռներուն մէկը՝ հիւսիսա-
յին կողմը՝ Մաքմասին դիմացն
էր, ու մէկալը հարաւային կողմը՝
6 *Գաբայային դիմացն էր։ Եւ
Յովնաթան իր զէնքերը կրող ման-
չուն ըսաւ. Եկուր աս անթլփատ-
ներուն պահապան զօրքին անց-
նինք, կարելի է որ Տէրը մեր ձեռ-
քովը բան մը ընէ. քանզի Շատ
մարդով կամ քիչ մարդով ազա-
տելու կողմէ արգելք մը չկայ Տէ-
7 րոջը առջեւ։ Ու իր զէնքերը կը-
րողը անոր ըսաւ. Բոլոր քու սըր-
տիդ մէջը եղածը ըրէ. յառաջ գը-
նա. ես քեզի հետ եմ քու
8 ուզածիդ պէս։ Եւ Յովնաթան
ըսաւ. Հիմա մենք ան մարդիկնե-
րուն անցնինք. ու անոնց երե-
9 նանք. Թէ որ մեզի այսպէս ըսեն
Կայնեցէ՛ք՝ մինչեւ որ մենք ձեզի
գանք, ան ատենը մեր տեղը կայ-
10 նինք, ու անոնց չելլենք։ Բայց
թէ որ այսպէս ըսեն. Մեզի ելէք,
ան ատենը ելլենք. քանզի Տէրը
զանոնք մեր ձեռքը տուած է. ու
11 ասիկայ մեզի նշան ըլլայ։ Ու երբ-
որ երկուքնին Փղշտացւոց պահա-
պան զօրքին երեցան, Փղշտա-
ցիք ըսին. Ահա Եբրայեցիք իրենց
պահուըտած ծակերէն դուրս կ՚ել-
12 լեն։ Եւ պահապան զօրքերը Յով-
նաթանին ու անոր զէնքերը կրողին
պատասխան տուին ու ըսին. Մե-
զի ելէք, ու ձեզի մէկ բան մը ի-
մացընենք. և Յովնաթան իր զէն-
քերը կրողին ըսաւ. Իմ ետեւէս ե-
լիր. քանզի Տէրը զանոնք Իսրայէ-
13 լին ձեռքը կու տայ։ Ու Յովնա-
թան ձեռքերովը ու ոտքերովը ե-
լաւ, և անոր զէնքերը կրողն ալ
անոր ետեւէն. ու Յովնաթանին
առջեւը ինկան. անոր զէնքերը կը-
րողն ալ անոր ետեւէն կը մեռցը-
14 նէր։ Եւ Յովնաթան ու անոր
զէնքերը կրողը աս առաջին կոտո-
րածին մէջ՝ քսան մարդու չափ
մեռցուցին կէս լծավարի չափ գետ-
15 նի վրայ։ Ու բանակին մէջը՝ դաշ-
տին մէջը՝ ու բոլոր ժողովուրդին
մէջը խռովութիւն եղաւ. պահա-
պան զօրքերը ու աւարառուներն
ալ զարհուրեցան, ու երկիրը դո-
ղաց, անանկ որ անոնց վրայ Աստու-
ծոյ կողմանէ վախ մը ինկաւ։
16 Եւ Բենիամինի Գաբայայէն Սա-
ւուղին դէտերը տեսան որ՝ ահա ան
բազմութիւնը մեծ շփոթութեան
մէջ է ու երթալով կը ցրուի։
17 Եւ Սաւուղ իր հետը եղող ժողո-
վուրդին ըսաւ. Աչքէ անցուցէք,
ու նայեցէք որ մեզմէ ո՛վ գացեր
է. ուստի անոնք աչքէ անցուցին,
և ահա Յովնաթանը ու անոր զէն-
18 քերը կրողը չկար։ Ան ատենը
Սաւուղ Աքիային ըսաւ. Աստու-
ծոյ տապանակը մօտեցուր. քանզի
ան ատենը Աստուծոյ տապանակը
19 Իսրայէլի որդւոցը հետն էր։ Ու
երբոր Սաւուղ քահանային հետ կը
խօսէր, Փղշտացւոց բանակին մէջի
աղմուկը երթալով կը շատնար.
և Սաւուղ ըսաւ քահանային.
20 Ձեռքդ քաշէ։ Ու Սաւուղ և իր
հետը եղող բոլոր ժողովուրդը մէկ-
տեղ ժողվուեցան, ու մինչեւ պա-
տերազմին տեղը գացին. և ահա
ամէն մարդ իր սուրը իր ընկերին
վրայ դարձուցեր էր, ու շատ մեծ
21 խռովութիւն մը կար։ Եւ ան Եբ-
րայեցիները՝ որ առաջուց Փղշտա-
ցւոց հետ էին, ու չրջակայ երկի-
րներէն անոնց հետ բանակը ելեր էին,
անոնք ալ Սաւուղին ու Յովնա-
թանին հետ եղող Իսրայէլին հետ
22 միացան։ Ու Եփրեմի լեռանը վրայ
պահուըտած Իսրայէլի բոլոր մար-
դիկները՝ Փղշտացւոց փախչիլը լսե-
լով, անոնք ալ անոնց ետեւէն պա-
23 տերազմին մէջ մտան։ Եւ ան
օրը Տէրը ազատեց Իսրայէլը. ու
պատերազմը Բեթաւանը անցաւ։
24 Եւ ան օրը Իսրայէլի մարդիկները
տագնապեցան. քանզի Սաւուղ
ժողովուրդին երդում ըրեր տուեր
էր ըսելով. Ով որ մինչեւ իրիկուն
հաց ուտէ՝ անիծեալ ըլլայ. որպէս
զի իմ թշնամիներէս վրէժ առնեմ.
ու բոլոր ժողովուրդը բերանը հաց
25 չդրաւ։ Եւ բոլոր †ժողովուրդը
մէկ անտառ մը մտաւ, ու գետնի
26 երեսին վրայ մեղր կար։ Ու երբոր
ժողովուրդը անտառը մտաւ, տե-
սաւ որ մեղր կը վազէր. բայց ձեռ-

Ն. Ք. գՔ. իրր 1087

Գլ. ժգ. 15։ Գլ. գ. 21։ Գլ. իբ. 9. 11. 20։ Գլ. ը. 28։ Գլ. ժգ. 23։ * կամ՝ Գաբային։ Դատ. է. 4. 7։ Բ Մն. ժդ. 11։ Տես Ծն. իդ. 14։ Դատ. է. 11։

Բ Օր. ժա. 25։ Յես. ժբ. 11։ Գլ. ժգ. 17։ Ծն. լե. 5։ Հմր. 20։ Դատ. իե. 21։ Դատ. է. 22։ Բ Մն. ի. 23։ Գլ. ժգ. 6։ Ել. ժդ. 30։ Սաղ. խդ. 6. 7։ Ովս. դ. 15։ Գլ. ժգ. 5։ Յես. զ. 26։ † Եբր. երկիրը. տես Բ Օր. թ. 28։ Մատ. գ. 5։ Ել. գ. 8։ Թւ. ժգ. 28։ Մատ. գ. 4։

Ն. Ք. ԳԺ. իբր 1087

մը բերնին մօտեցընող չկար. քանզի ժողովուրդը երդումէն վախցաւ։
27 Իսկ Յովնաթան չլսեց, երբոր իր
հայրը ժողովուրդին երդում ընել
տուաւ. ուստի իր ձեռքի գաւա-
զանին ծայրը երկնցուց, ու զանի-
կայ մեղրին խորիսխին մէջ խոթեց.
ու իր ձեռքը բերանը տանելով,
28 աչքերը բացուեցան։ Ան ատենը
ժողովուրդէն մէկը պատասխան
տուաւ ու ըսաւ. Քու հայրդ ժողո-
վուրդին մեծ երդում ընել տուաւ՝
ըսելով. Այսօր հաց ուտող մարդը
անիծեալ ըլլայ։ Եւ ժողովուրդը
29 նուաղած էր։ Ու Յովնաթան ը-
սաւ. Իմ հայրս ժողովուրդը նե-
ղութեան մէջ ձգեց. նայեցէք
աս մեղրէն քիչ մը ուտելուս պէս՝
30 աչքերս բացուեցան. Ալ որչափ
աւելի՝ թէ որ ժողովուրդը այսօր
իր թշնամիներէն գտած աւարը
կշտանալով ուտէր. քանզի հիմա
Փղշտացւոց մէջ *աւելի մեծ կոտո-
րած կ'ըլլար՝։
31 Եւ ան օրը անոնք՝ Փղշտացիները
Մաքմասէն մինչեւ Այլեղոնը զար-
կին. ու ժողովուրդը խիստ նուա-
32 ղեցաւ։ Եւ ժողովուրդը աւարին
վրայ ինկաւ. ու ոչխարները, ար-
ջառները, և որթերը առին, ու
գետնի վրայ մորթեցին. ու ժողո-
33 վուրդը արիւնովը կերաւ։ Եւ
Սաւուղին իմացուցին ու ըսին. Ա-
հա ժողովուրդը Տէրոջը դէմ կը
մեղանչէ, քանզի արիւնով կ'ուտէ։
Եւ անիկայ ըսաւ. Անօրէնութիւն
ըրիք. հիմա ինծի մէկ մեծ քար մը
34 գլորեցէք։ Ու Սաւուղ ըսաւ. Ժո-
ղովուրդին մէջ ցրուեցէք, և ա-
նոնց ըսէք. Ամէն մարդ իր արջառը
ու իր ոչխարը ինծի մօտեցընէ, ու
հոս մորթէ և ուտէ, ու արիւնով
ուտելով՝ Տէրոջը դէմ մեղք չգոր-
ծէ։ Ուստի բոլոր ժողովուրդը՝
ամէն մարդ իր ձեռքովը ան գիշերը
իր արջառը մօտեցուց, ու հոն մոր-
35 թեց։ Եւ Սաւուղ Տէրոջը սե-
ղան շինեց, աս էր Տէրոջը համար
Սաւուղին շինած առջի սեղանը։
36 Եւ Սաւուղ ըսաւ. Գիշերով
Փղշտացւոց ետեւէն իջնենք, ու
մինչեւ որ առաւօտը ծագէ՝ զանոնք
թալենք, ու անոնցմէ մարդ մը չթո-
ղունք. և անոնք ըսին. Քու աչ-
քերուդ ինչ որ հաճոյ է՝ ան ըրէ։
Ու քահանան ըսաւ. Հոս Աստուծոյ
37 քովը մօտենանք։ Եւ Սաւուղ Աս-
տուծոյ հարցուց՝ ըսելով. Փղշտա-
ցւոց ետեւէն իջնե՞մ. զանոնք Իս-
րայէլին ձեռքը պիտի տա՞ս։ Բայց
ան օրը պատասխան չտուաւ անոր։
38 Ան ատենը Սաւուղ ըսաւ. Հոս
մօտեցէք՝ ժողովուրդին բոլոր իշ-
խանները. և հասկըցէք ու տեսէք
թէ այսօր աս մեղքը որո՞ւնն է։
39 Քանզի Իսրայէլը ազատող Տէրը
կենդանի է որ՝ թէ որ իմ որդւոյս
Յովնաթանինն ալ ըլլայ, անպատ-
ճառ պիտի մեռնի. ու բոլոր ժո-
ղովուրդին մէջը անոր պատասխան
40 տուող մը չկար։ Ան ատենը ա-
նիկայ բոլոր Իսրայէլին ըսաւ. Դուք
մէկ կողմը կայնեցէք, ու ես և իմ
որդիս Յովնաթանը միւս կողմը
կայնինք. ու ժողովուրդը Սաւու-
ղին ըսաւ. Աչքերուդ հաճոյ երեցա-
41 ծը ըրէ։ Եւ Սաւուղ Իսրայէլի
Տէր Աստուծոյն ըսաւ. Ճշմար-
տութիւնը յայտնէ. Եւ Յովնա-
թանը ու Սաւուղը վիճակով բռնուե-
ցան, ու ժողովուրդը ազատ մնաց։
42 Եւ Սաւուղ ըսաւ. Իմ վրաս՝ ու իմ
որդւոյս Յովնաթանին վրայ վիճակ
ձգեցէք. ու Յովնաթանը բռը-
43 նուեցաւ։ Եւ Սաւուղ Յովնա-
թանին ըսաւ. Ինծի իմացուր թէ
ի՛նչ ըրիր. ու Յովնաթան անոր
իմացուց ու ըսաւ. Ձեռքիս գա-
ւազանին ծայրովը քիչ մը մեղր կե-
րեր եմ. ահա ես պիտի մեռ-
44 նիմ։ Եւ Սաւուղ ըսաւ. Աս-
տուած ինծի այսպէս ու ասկէ աւելի
ընէ՝ որ անշուշտ պիտի մեռնիս,
45 Յովնաթան։ Բայց ժողովուրդը
Սաւուղին ըսաւ. Յովնաթա՞նը
պիտի մեռնի, ան որ այսօր Իսրա-
յէլի մէջ աս մեծ փրկութիւնը ը-
րաւ. քաւ լիցի, կենդանի է Տէրը՝
որ անոր գլխուն մէկ մազը գետինը
պիտի չիյնայ. քանզի այսօր Աս-
տուծով յաջողութիւն ըրաւ։ Այս-
պէս ժողովուրդը Յովնաթանը ա-
46 զատեց, ու անիկայ չմեռաւ։ Եւ
Սաւուղ Փղշտացիներէն ետ դար-
ձաւ, ու Փղշտացիք իրենց տեղը
գացին։
47 Ուստի Սաւուղ սկսաւ Իսրայէլի
վրայ թագաւորել. ու բոլոր շուր-
ջակայ թշնամիներուն հետ՝ Մովաբին հետ, և Ամմոնի որդւո-
ցը հետ, Եդոմի հետ, Սուբայի
թագաւորներուն հետ, ու Փղշտա-
ցւոց հետ պատերազմ ըրաւ. և ուր
կողմը որ դարձաւ, յաղթութիւն
48 ըրաւ։ Ու զօրք ժողվելով Ա-
մաղէկը զարկաւ, և ազատեց Իս-
րայէլը՝ իր կողոպտիչներուն ձեռ-
քէն։
49 Ու Սաւուղին որդիքը՝ Յովնա-
թան, Յեսուի ու Մեղքիսուէ-
ղին. և անոր երկու աղջիկներուն
անունները՝ առջինին անունը՝ Մե-
րոբ, ու պզտիկին անունը Մեղ-
50 քող էր։ Եւ Սաւուղին կնկանը
անունը Աքինոամ էր՝ Աքիմաասին
աղջիկը, ու անոր զօրավարին ա-

* Կամ՝ չատ մեծ կոտորած չեղաւ։
Ղեւ. Գ. 17։ Է. 26։ ԺԷ. 10։ ԺԹ. 26։ Բ Օր. ԺԲ. 16. 23. 24։
Գլ. Է. 17։
Գլ. ԻԸ. 6։ Յես. Է. 14։ Գլ. Ժ. 19։ Դատ. Ի. 2։

Ն. Ք. ԳԺ. իբր 1087
Բ Թագ. ԺԲ. 5։
Առակ. ԺԶ. 33։ Գործ. Ա. 24։
Յես. Է. 16։ Գլ. Ժ. 20. 21։
Յես. Է. 19։
Հմր 27։
Հռութ. Ա. 17։
Հմր 39։
Բ Թագ. ԺԴ. 11։ Գ Թագ. Ա. 52։ Ղուկ. ԻԱ. 18։
Բ Գլ. ԺԱ. 11։
Բ Թագ. Ը. 6։
Կամ՝ քաջութիւն ընելով
Գլ. ԺԵ. 3. 7։
Գլ. ԼԱ. 2։ Ա Մն. Ը. 33։

Ն. Ք. Դ. Ք.
Իրր 1087
+Գլ. Թ. 1 ։
°Գլ. Ը. 11 ։

նունը Աբեններ էր՝ Սաւուղին հօր-
51 եղբօրը Ներին որդին ։ +Եւ Կիս՝
Սաւուղին հայրն էր, ու Աբեններին
հայրը Ներ՝ Աբիէլին որդին էր ։
52 Եւ Սաւուղին բոլոր օրերը՝ Փղ-
շտացւոց դէմ սաստիկ պատե-
րազմ կար. ու Սաւուղ ամէն տե-
սած զօրաւոր մարդը և ամէն ուժի
տէր եղողը °իր քովը կը ժողվէր ։

## ԳԼ. ԺԵ

1 Սամուէլ կը խրկէ Սաւուղը՝ որ երթայ Ամաղէկը ջարդէ ։ 6 Սաւուղ Կենեցիներուն մարդասիրութիւն կը ցուցնէ ։ 8 Ագագին, ու աւարին աղէկներուն կը խնայէ ։ 10 Սամուէլ կ՚իմացընէ Սաւուղին թէ Աստուած ինչպէս մերժեց զանիկայ իր անհնազանդութեանը համար ։ 24 Սաւուղ կը խոնարհի ։ 32 Սամուէլ Ագագը կը մեռցընէ ։ 34 Սամուէլ ու Սաւուղ կը զատուին ու իրենց տեղը կ՚երթան ։

Իրր 1079
=Գլ. Թ. 16 ։
ԲԵլ. ԺԷ. 8, 14 ։ Թուոց. ԻԴ. 20 ։ Բ Օր. ԻԵ. 17, 18, 19 ։
ԳՅես. Զ. 17, 21 ։
ԴԹուոց. ԻԴ. 21 ։ Դատ. Ա. 16 ։ Դ. 11 ։
ԵԾն. ԺԸ. 25 ։ ԺԹ. 12, 14 ։ Յայտ. ԺԸ. 4 ։
ԶԵլ. ԺԳ. 10, 19 ։ Թուոց. Ժ. 29, 32 ։
ԷԾն. ԻԵ. 18 ։
ԸԾն. ԺԶ. 7 ։
ԹԳլ. ԺԴ. 48 ։
ԺՏես Գ Թագ. Ի. 31, 35, 42 ։
ԺԱՏես Գլ. Լ. 1 ։
ԺԲՀմր 3, 15 ։
* Կամ՝ երկրորդականները ։

1 Եւ Սամուէլ ըսաւ Սաւուղին.
=Տէրը զիս՝ իր Իսրայէլ ժողո-
վուրդին վրայ քեզ թագաւոր օծե-
լու խրկեց. ու հիմա Տէրոջը խօս-
2 քերուն ձայնը մտիկ ըրէ ։ Զօրաց
Տէրը այսպէս կ՚ըսէ. Միտքս բերի
ինչ որ Ամաղէկը ըրաւ Իսրայէլին.
անոր Եգիպտոսէն ելած ատենը՝
Բճամբուն մէջ անոր դէմ դնելով ։
3 Հիմա գնա, ու Ամաղէկը զարկ, և
Գանոր բոլոր ունեցածը նզովածի
պէս բնաջինջ ըրէ, ու անոր չխնա-
յես. և էրիկ մարդէն մինչև կնիկ
մարդը, ու տղայէն մինչև կաթն-
կերը, արջառէն մինչև ոչխարը, և
ուղտէն մինչև էշը մեռցընես ։
4 Ուստի Սաւուղ ժողովուրդը
կանչեց, ու Տեղայիմի մէջ զանոնք
համրեց, որ երկու հարիւր հազար
հետևակ զօրք էին, ու Յուդայեանք
5 ալ տասը հազար ։ Եւ Սաւուղ
մինչև Ամաղէկացւոց մէկ քաղաքը
գնաց, ու հեղեղատին մէջը դարա-
6 նակալ եղաւ ։ Եւ Սաւուղ ԴԿե-
նեցիներուն ըսաւ. ԵԳացէք, զա-
տուեցէք, ու Ամաղէկացւոց մէջէն
իջէք, չըլլայ որ ձեզ անոնց հետ
մէկտեղ զարնեմ. քանզի Զդուք
բոլոր Իսրայէլի որդւոցը ողորմու-
թիւն ըրիք, անոնց Եգիպտոսէն
ելած ատենը ։ Ուստի Կենեցիները
Ամաղէկացւոց մէջէն զատուեցան ։
7 Եւ Սաւուղ՝ ԷԵւիլայէն մինչև Ե-
գիպտոսին դիմացի ԸՍուրը՝ ԹԱմա-
8 ղէկը զարկաւ ։ Ու ԺԱմաղէկին
թագաւորը Ագագը ողջ բռնեց,
ու ԺԱբոլոր ժողովուրդը սուրի բեր-
9 նով ջարդեց ։ Բայց Սաւուղ ժո-
ղովուրդին հետ՝ ԺԲԱգագը, և ոչ-
խարներուն ու արջառներուն ա-
ղէկները ու *դերերը, և գառները,
ու ամէն պատուական բաները խը-
նայեցին, և չուզեցին զանոնք ջար-

դել, հապա բոլոր անարգ ու ան-
պիտան անասունները ջարդեցին ։
10 Եւ Տէրոջը խօսքը Սամուէլին ե-
11 ղաւ, ըսելով. ԲՍաւուղը թագա-
ւոր ընելուս զղջացի. Գքանզի ինծ-
մէ ետ դարձաւ, Դու իմ խօսքերս
չկատարեց ։ Եւ Սամուէլ Ետրտմե-
ցաւ, ու բոլոր գիշերը Տէրոջը ա-
12 ղաղակեց ։ Ու Սամուէլ առաւօ-
տուն կանուխ ելաւ, որ էրթայ Սա-
ւուղը դիմաւորէ. և Սամուէլին
իմացուցին՝ ու ըսին. Սաւուղը
ԶԿարմեղոս եկաւ, և ահա իրեն
համար †յաղթութեան նշան"
կանգնեց, ու անկէ դառնալով
անցաւ, ու Գաղգաղա իջաւ ։
13 Եւ Սամուէլ Սաւուղին քովը
գնաց. ու Սաւուղ անոր ըսաւ.
ԷԴուն Տէրոջմէն օրհնեալ ըլլաս.
14 Տէրոջը խօսքը կատարեցի ։ Եւ
Սամուէլ ըսաւ. Հապա աս ոչխար-
ներուն ձայնը ի՞նչ պիտի ըլլայ՝ որ
իմ ականջիս կու գայ, ու արջառ-
15 ներուն ձայնը որ ես կը լսեմ ։ Եւ
Սաւուղ ըսաւ. Զանոնք Ամաղէ-
կացիներէն բերին. Ըքանզի ժողո-
վուրդը պինտ աղէկ ոչխարները ու
արջառները ողջ թողուցին, որ զա-
նոնք քու Տէր Աստուծոյդ զոհ մա-
տուցանեն. սակայն մէկայները
16 ջարդեցինք ։ Ան ատենը Սամուէլ
ըսաւ Սաւուղին. Կեցիր որ քեզի
պատմեմ ինչ որ Տէրը աս գիշեր
ինծի խօսեցաւ ։ Ան ալ անոր ը-
17 սաւ. Խօսէ ։ Եւ Սամուէլ ըսաւ
Սաւուղին. ԹԱհա դուն ‡որ քու աչ-
քերուդ պզտիկ կ՚երևնայիր, Իսրա-
յէլի որդւոցը ցեղերուն գլուխ ե-
ղար, ու Տէրը քեզ Իսրայէլի վրայ
18 թագաւոր օծեց ։ Եւ Տէրը քեզ
մէկ ճամբայ մը խրկեց՝ ըսելով.
Գնա՛, ու ան մեղաւոր Ամաղէկա-
ցիները նզովածի պէս ջարդէ, և
անոնց դէմ պատերազմ ըրէ, մինչև
19 որ զանոնք բնաջինջ ընես ։ Իսկ
դուն ինչո՞ւ համար Տէրոջը ձայնին
հնազանդութիւն չըրիր, ու աւարին
վրայ իյնալով՝ Տէրոջը առջևը չա-
20 րութիւն ըրիր ։ Եւ Սաւուղ ըսաւ
Սամուէլին. ԺԱհա ես Տէրոջը ձայ-
նին հնազանդութիւն ըրի, ու Տէրը
զիս որ ճամբան որ խրկեց, ան ճամ-
բան գացի, և Ամաղէկի թագաւորը
Ագագը բերի, ու Ամաղէկը նզո-
21 վածի պէս բնաջինջ ըրի ։ ԺԱՍակայն
ժողովուրդը ան աւարէն ոչխարներ
ու արջառներ առաւ, նզովածնե-
րէն պինտ աղէկները՝ որ զանոնք
Գաղգաղայի մէջ քու Տէր Աստու-
22 ծոյդ զոհ ընեն ։ Եւ Սամուէլ ը-
սաւ. ԺԲՄիթէ Տէրոջը առջևը ող-
ջակէզները ու զոհերը՝ Տէրոջը ձայ-
նին հնազանդութիւն ընելու չափ

Ն. Ք. Դ. Ք.
Իրր 1079
ԲՀմր 35 ։ Ծն. Զ. 6, 7 ։ Բ Թագ. ԻԴ. 16 ։
ԳՅես. ԻԲ. 16 ։ Գ Թագ. Թ. 6 ։
ԴԳլ. ԺԴ. 13 ։ Հմր 3, 9 ։
ԵՀմր 35 ։ Գլ. ԺԶ. 1 ։
ԶՅես. ԺԵ. 55 ։
† Եբր. ձեռք
ԷԾն. ԺԴ. 19 ։ Դատ. ԺԷ. 2 ։ Հռութ. Գ. 10 ։
ԸՀմր 9, 21 ։ Ծն. Գ. 12 ։ Առակ. ԻԸ. 13 ։
ԹԳլ. Թ. 21 ։
‡ Եբր. Թէև
ԺՀմր 13 ։
ԺԱՀմր 15 ։
ԺԲՍաղ. Ծ. 8, 9 ։ Առակ. ԻԱ. 3 ։ Եսա. Ա. 11, 12, 13, 16, 17 ։ Երեմ. Է. 22, 23 ։ Միք. Զ. 6, 7, 8 ։ Ովս. Զ. 6, 7, 8, 9 ։

Ն. Ք. Ծ. իրր 1079

համո՞յ է. ահա՛ հնազանդութիւ-
նը՝ զոհէն, ու խօսք մտիկ ընելը՝
23 խոյերուն ճարպէն աղէկ է. Քանզի
ապստամբութիւնը կախարդու-
թեան մեղքին պէս, ու կամա-
կորութիւնը * կռապաշտութեան
պէս է. որովհետեւ դուն Տէրոջը
խօսքը մերժեցիր, անիկայ ալ
քեզ մերժեց՝ որ թագաւոր չըլ-
լաս։
24 Եւ Սաւուղ ըսաւ Սամուէլին.
Մեղք գործեցի, որ Տէրոջը հը-
րամանը ու քու խօսքերդ զանց ը-
րի. քանզի ժողովուրդէն վախնա-
լուս համար, անոնց խօսքը մտիկ
25 ըրի։ Ու հիմա կ՚աղաչեմ, իմ
յանցանքս ներէ՛, և իմ հետս դար-
ձիր, որ Տէրոջը երկրպագութիւն
26 ընեմ։ Եւ Սամուէլ ըսաւ Սա-
ւուղին. Ես քու հետդ չեմ դառ-
նար. քանզի դուն Տէրոջը խօսքը
մերժեցիր, Տէրն ալ քեզ մերժեց՝
որ Իսրայէլի վրայ թագաւոր չըլլաս։
27 Ու Սամուէլ դարձաւ որ [illegible]
[illegible] երթայ. բայց անիկայ՝
անոր վերարկուին ծայրէն բռնեց,
28 որ պատռեցաւ։ Ան ատենը Սա-
մուէլ անոր ըսաւ. Տէրը այսօր
քու վրայէդ Իսրայէլին թագաւո-
րութիւնը պատռեց, ու զանիկայ
քեզմէ աղէկ եղող ընկերիդ տուաւ։
29 Եւ Իսրայէլին Ապաւէնը սուտ
չզրուցեր, ու չզղջար. քանզի ա-
30 նիկայ մարդ չէ՝ որ զղջայ։ Եւ Սա-
ւուղ ըսաւ. Մեղք գործեցի. կ՚ա-
ղաչեմ, հիմա իմ ժողովուրդիս
ծերերուն առջեւ՝ ու Իսրայէլին
առջեւ զիս պատուէ՛, և իմ հետս
դարձիր, որ քու Տէր Աստուծոյդ
31 երկրպագութիւն ընեմ։ Ու Սա-
մուէլ Սաւուղին ետեւէն դարձաւ,
և Սաւուղ Տէրոջը երկրպագու-
թիւն ըրաւ։
32 Ետքը Սամուէլ ըսաւ. Ամա-
ղէկին թագաւորը Ագագը ինծի
բերէք. ու Ագագ քնքշութեամբ
անոր մօտեցաւ. և Ագագ ըսաւ.
Անշուշտ մահուան դառնութիւնը
33 անցած է։ Բայց Սամուէլ ըսաւ.
Ինչպէս որ քու սուրդ կիները
անզաւակ թողուց, նոյնպէս ալ
քու մայրդ կիներուն մէջը անզա-
ւակ մնայ։ Ու Սամուէլ Գաղգա-
ղայի մէջ Տէրոջը առջեւ կտոր կտոր
ըրաւ Ագագը։
34 Եւ Սամուէլ Ռամա գնաց, ու
Սաւուղ իր տունը՝ Սաւուղին Գա-
35 բաան ելաւ։ Եւ Սամուէլ մին-
չեւ իր մահուան օրը՝ մէյմըն ալ
Սաւուղը չտեսաւ. քանզի Սամուէլ
Սաւուղին համար սուգ կ՚ընէր. և
Տէրը Սաւուղը Իսրայէլի վրայ
թագաւոր ընելուն զղջաց։

ա Ժող. Ե. 1։ Ովս. Զ. 6։ Մատ. Ե. 24։ Թ. 13։ ԺԲ. 7։ Մար. ԺԲ. 33։
բ Բ Օր. ԺԲ. 10։
* Եբր. ունայնութիւն ու թերափիմ
գ Գլ. ԺԳ. 14։
դ Տես Բ Թագ. ԺԲ. 13։
ե Ել. ԻԳ. 2։ Առակ. ԻԹ. 25։ Ես. ԾԱ. 12, 13։
զ Տես Գլ. Բ. 30։
է Գ Թագ. ԺԱ. 30։
ը Գլ. ԻԸ. 17, 18։ Գ Թագ. ԺԱ. 31։
թ Թուոց. ԻԳ. 19։ Եզեկ. ԻԴ. 14։ Բ Տիմ. Բ. 13։ Տիտ. Ա. 2։
ժ Յովհ. Ե. 44։ ԺԲ. 43։
ի Ել. ԺԷ. 11։ Թուոց. ԺԴ. 45։ Տես Դատ. Ա. 7։
լ Գլ. ԺԱ. 4։
խ Տես Գլ. ԺԹ. 24։
ծ Համր 11։ Գլ. ԺԶ. 1։
կ Համր 11։

## ԳԼ. ԺԶ

1 Սամուէլ Աստուծմէ կը խրկուի զոհ մը մատու-
ցանելու պատճառով, ու Բեթլեհէմ կու գայ։
6 Անոր մարդկօրէն դատողութիւնը կը յան-
դիմանուի։ 11 Սամուէլ Դաւիթը կ՚օծէ։ 15
Սաւուղ Դաւիթը կանչել կու տայ որ զինքը
նեղող չար ոգիէն հանգստութիւն գտնէ։

1 Ու Տէրը Սամուէլին ըսաւ. Մին-
չեւ ե՞րբ Սաւուղին համար սուգ
կ՚ընես. որովհետեւ ես զանիկայ
մերժեցի, որ Իսրայէլի վրայ չթա-
գաւորէ. եղջիւրդ եղով լեցուր,
ու եկուր քեզ Բեթլեհեմացի Յես-
սէին խրկեմ. քանզի անոր որդւո-
ցը մէկը ինծի թագաւոր ընտրեցի։
2 Ու Սամուէլ ըսաւ. Ի՞նչպէս եր-
թամ. թէ որ Սաւուղը լսէ, զիս
կը մեռցնէ. և Տէրը ըսաւ. ‡ Հետդ
մէկ երինջ մը առ, ու ըսէ՛ թէ՝
3 Տէրոջը զոհ ընելու եկայ. Եւ Յես-
սէն զոհին հրաւիրէ. ու քու ընե-
լու բանդ ես քեզի կը հասկցընեմ.
և ինծի [illegible] օծես ան մարդը՝
որ քեզի պիտի ըսեմ։
4 Ու Սամուէլ Տէրոջը ըսածը ը-
րաւ. ու Բեթլեհէմ գնաց։ Եւ
քաղաքին ծերերը դողալով զանի-
կայ դիմաւորեցին, ու ըսին. Ա՞ր-
5 դեօք խաղաղութեամբ եկար։ Եւ
անիկայ ըսաւ. Խաղաղութեամբ.
Տէրոջը զոհ ընելու եկայ. սրբուե-
ցէ՛ք՝ ու իմ հետս զոհի եկէք. և
Յեսսէն ու անոր որդիները սրբել
տուաւ, և անոնք զոհի հրաւիրեց։
6 Ու երբոր անոնք եկան, Եղիաբը
տեսնելով՝ ըսաւ. Իրաւ որ Տէ-
7 րոջը օծեալը իր առջեւն է։ Բայց Տէ-
րը Սամուէլին ըսաւ. Անոր երեսյ-
թին ու հասակին երկայնութեա-
նը մի՛ նայիր. քանզի ես զանիկայ
անարգեցի. որովհետեւ մարդուն
նայելը չըլլար. քանզի մարդը՝
‖ երեւցածին կը նայի, բայց Տէրը
8 սրտին կը նայի։ Եւ Յեսսէն Ա-
բինադաբը կանչեց, ու զանիկայ
Սամուէլին առջեւէն անցուց. և
Սամուէլ ըսաւ. Տէրը ասիկայ ալ
9 չընտրեց։ Ու Յեսսէ Սամաան
անցուց. և Սամուէլ ըսաւ. Տէրը
10 ասիկայ ալ չընտրեց։ Ու երբոր
Յեսսէ Սամուէլին առջեւէն իր եօթը
որդիները անցուց, Սամուէլ Յես-
սէին ըսաւ. Տէրը ասոնցմէ մէկը
11 չընտրեց։ Եւ Սամուէլ Յեսսէին
ըսաւ. Տղաքներդ ա՞յդչափ են։ Ու
անիկայ ըսաւ. Տակաւին պինտ
պզտիկը մնաց, և ահա անիկայ ոչ-
խարները կ՚արածէ։ Ու Սամուէլ
Յեսսէին ըսաւ. Մարդ խրկէ՛ ու
զանիկայ բերել տուր. քանզի մին-
չեւ որ անիկայ հոս չգայ, մենք սեղան
12 պիտի չնստինք։ Ուստի մարդ խըր-
կեց, ու զանիկայ բերել տուաւ.
և անիկայ կարմիր էր, ու աղուոր

Ն. Ք. Ծ. իրր 1063

ա Գլ. ԺԵ. 35։
բ Գլ. ԺԵ. 23։
գ Գլ. Թ. 16։ Դ Թագ. Թ. 1։
դ Սաղ. ՀԸ. 70։ ՁԹ. 19, 20։ Գործ. ԺԳ. 22։
† Եբր. տեսայ։
‡ Եբր. Ձեռքդ
ե Գլ. Թ. 12։ Ի. 29։
զ Ել. Դ. 15։
է Գլ. Թ. 16։
ը Գլ. ԻԱ. 1։
թ Գ Թագ. Բ. 13։ Դ Թագ. Թ. 22։
ժ Ել. ԺԹ. 10, 14։
ի Գլ. ԺԷ. 13։ Ա Մն. ԻԷ. 18։
լ Դ Թագ. ԺԲ. 26։
խ Սաղ. ՃԽԷ. 10, 11։
ծ Ես. ԾԵ. 8։
կ Բ Կոր. Ժ. 7։
‖ Եբր. աչքերուն
հ Գ Թագ. Ը. 39։ Ա Մն. ԻԸ. 9։ Սաղ. Է. 9։ Երեմ. ԺԱ. 20։ ԺԷ. 10։ Ի. 12։ Գործ. Ա. 24։
ձ Գլ. ԺԷ. 13։
ղ Գլ. ԺԷ. 13։ Բ Թագ. ԺԳ. 3։ Ա Մն. Բ. 13։
ճ Գլ. ԺԷ. 12։
մ Բ Թագ. Է. 8։ Սաղ. ՀԸ. 70։
յ Գլ. ԺԷ. 42։ Երգ. Ե. 10։

Ն․ Ք․ ՉՔ․ Իրր 1063
ի Գլ․ Թ․ 17։ ւ Գլ․ Ժ․ 1։ Սաղ․ ՃԹ․ 20։
ա Տես Թուո․ ԻԷ․ 18։ Դատ․ Ժա․ 29։ Ժգ․ 25։ Ժդ․ 6։ Գլ․ Ժ․ 6, 10։
Իրր 1065
Ն Տես Գլ․ Ժա․ 6։ Ժը․ 12։ Իը․ 15։ Դատ․ Ժշ․ 20։ Սաղ․ Ծա․ 11։
ղ Դատ․ Թ․ 23։ Գլ․ Ժը․ 10։ ԺԹ․ 9։
* Կամ՝ զանիկայ կը զարհուրեցընէր։
չ Ծն․ Խա․ 46։ Հմր 21․ 22։ Դ Թագ․ Ժ․ Տ։
ս Հմր 23։ Գ Թագ․ Գ․ 15։
† Եբր․ քեզի աղէկ ըլլայ։
շ Գլ․ ԺԷ․ 32, 34, 35, 36։
Է Գլ․ Գ․ 19։ Ժը․ 12, 14։
ո Հմր 11։ Գլ․ ԺԷ․ 15, 34։
ր Տես Գլ․ Ժ․ 27։ ԺԷ․ 18։ Ծն․ Խգ․ 11։ Առակ․ Ժը․ 16։
յ Ծն․ Խա․ 46։ Գ Թագ․ Ժ․ Տ։ Առակ․ Իբ․ 29։
ս Հմր 14, 16։

աչքեր ունէր, ու դէմքն ալ գեղեցիկ
էր ։ ՚Ան ատենը Տէրը ըսաւ. Ե-
լի՛ր, ասիկայ օծէ. քանզի ասիկայ
13 է ։ Եւ Սամուէլ եղին եղջիւրը ա-
ռաւ, ու եղանիկայ իր եղբարցը
մէջ օծեց. ու ան օրէն ետքը՝ ա Տէ-
րոջը Հոգին Դաւիթին վրայ եկաւ,
ու Սամուէլ ելաւ Ռամա գնաց ։
14 ՆԵւ Տէրոջը Հոգին Սաւուղէն
հեռացաւ. ու Տէրոջը կողմանէ
ղչար ոգի մը *անոր նեղութիւն
15 կու տար" ։ Եւ Սաւուղին ծառա-
ները անոր ըսին. Ահա Աստուծոյ
կողմանէ չար ոգի մը քեզի նեղու-
16 թիւն կու տայ. Մեր տէրը Չիր
առջեւը եղող ծառաներուն ըսուցէ՝
որ աղէկ քնարահար մը փնտռեն,
ու երբոր Աստուծոյ կողմանէ ան
չար ոգին քու վրադ գայ, անիկայ
ղիր ձեռքովը քնարը զարնէ, ու
17 †դուն հանգստանաս" ։ Եւ Սա-
ւուղ իր ծառաներուն ըսաւ. Հի-
մա ինծի մէկ աղէկ քնարահա՛ր մը
գտէք, ու զանիկայ ինծի բերէք ։
18 Եւ ծառաներուն մէկը պատասխան
տուաւ ու ըսաւ. Ահա՛ Բեթլեհե-
մացի Յեսսէին մէկ տղան տեսայ,
որ քնար զարնելը գիտէ, ու շա-
նիկայ զօրաւոր, պատերազմող,
ճարտասան, ու գեղեցիկ տեսքով
կտրիճ մըն է, և էՏէրը անոր հետ
19 է ։ Ու Սաւուղ՝ Յեսսէին պատգա-
մաւորներ խրկեց ու ըսաւ. ո Ոչ-
խարներուն քովը գտնուող տղադ
20 Դաւիթը ինծի՛ խրկէ ։ Եւ Յեսսէ
ր հացով բեռնաւորուած էշ մը, տիկ մը գինի, ու
այծերէն ուլ մը առնելով՝ իշու
վրայ բեռնաւորեց, ու զանոնք իր
տղուն Դաւիթին ձեռքովը Սա-
21 ւուղին խրկեց ։ Եւ Դաւիթ Սա-
ւուղին եկաւ, ու յանոր առջեւը
կայնեցաւ ։ Եւ Սաւուղ զանիկայ
շատ սիրեց, ու Դաւիթ անոր կա-
պարճակիրը եղաւ ։
22 Եւ Սաւուղ Յեսսէին մարդ խըր-
կեց ըսելով. Դաւիթը թող իմ
առջե՛ս կայնի. քանզի անիկայ իմ
23 առջեւս շնորհք գտաւ ։ Ու երբոր
Աստուծմէ սչար ոգին Սաւուղին
վրայ կու գար, Դաւիթ քնարը
կ՚առնէր, ու իր ձեռքովը կը զար-
նէր. և Սաւուղ կը հանգստանար
ու կը զուարճանար, և չար ոգին
անոր վրայէն կ՚երթար ։

## ԳԼ․ ԺԷ

1 Իսրայէլացւոց ու Փղշտացւոց բանակները պատերազմելու պատրաստուած ըլլալով ։ 4 Գողիաթ հպարտութեամբ կու գայ մենամարտութեան հրաւիրելու ։ 12 Դաւիթ՝ իր հօրմէն եղբայրները տեսնելու խրկուելով՝ մենամարտութեան մտնելու կը համարձակի ։ 28 Եղիաբ կը յանդիմանէ զանիկայ ։ 30 Դաւիթ Սաւուղին առջեւը կը բերուի ։ 32 ու հոն իր վստահութեան իրաւունքը կը ցուցընէ ։ 38 առանց զէնքի՝ հաւատքով զրահաւորուած ․ ան հսկան կը սպաննէ ։ 55 Սաւուղ Դաւիթին վրայով տեղեկութիւն կը ստանայ ։

1 Նու Փղշտացիք աիրենց զօրքերը
ժողվեցին պատերազմելու հա-
մար, ու բՅուդայի Սոքովին մէջ
ժողվուեցան. և Սոքովի ու Ազեկայի
մէջտեղը գԱփեսդոմմինը բանակե-
2 ցան ։ Եւ Սաւուղ ու Իսրայէլի
մարդիկը ժողվուեցան, ու Էլայի
հովիտին մէջը բանակեցան. և Փը-
ղշտացւոց դէմ պատերազմ ընե-
լու համար կարգաւ շարուեցան ։
3 Ու Փղշտացիք մէկ կողմանէ մէկ
լեռան մը վրայ կայներ էին, ու
Իսրայէլացիք մէկալ կողմանէ մէկ
լեռան մը վրայ կայներ էին. ու
4 հովիտը անոնց մէջն էր ։ Եւ Փը-
ղշտացւոց բանակէն՝ դԳողիաթ
անունով՝ Գեթացի մէկ կանգուն ու մէկ
թիզ բարձրութեամբ եԳեթացի
5 ախոյեան մը ելաւ. Անոր գլուխը
պղնձէ սաղաւարտ կար, ու հիւ-
սուած զրահ մը հագեր էր. ու ա-
նոր պղնձէ զրահին ծանրութիւնը
6 հինգ հազար սիկղ էր ։ Եւ ոտքե-
րուն վրայէն պղնձէ սռնապաններ,
ու ուսոցը մէջ պղնձէ ‡գեղարդ մը
7 ունէր ։ զԱնոր նիզակին բունը ոս-
տայնանկաց գլանին պէս էր, ու նի-
զակին տէգը վեց հարիւր սիկղ եր-
կաթէ էր. և անոր վահանը կրողը
8 անոր առջեւէն կ՚երթար ։ Անիկայ
եկաւ կայնեցաւ, ու Իսրայէլի գուն-
դերուն կանչելով՝ անոնց ըսաւ.
Ինչո՞ւ համար ձեզ դէմ պատերազմ
ընելու ելեր էք, ու գունդերով
շարուեր էք. միթէ ես Փղշտացի
չե՞մ, ու դուք էՍաւուղին ծառա-
ները չէ՞ք. ձեր մէջէն մա՛րդ մը
ընտրեցէք, որ իջնէ ինծի հետ մե-
9 նամարտի. Թէ որ կարող ըլլայ ին-
ծի հետ ծեծկուելու, ու զիս
մեռցընէ, ան ատենը մենք ձեզի
ծառայ ըլլանք. բայց թէ որ ես
յաղթեմ, ու զանիկայ մեռցընեմ,
ան ատենը դուք մեզի ծառայ ըլ-
լաք, ու ըմեզի ծառայութիւն ը-
10 նէք ։ Եւ ան Փղշտացին ըսաւ.
Ես թայսօր Իսրայէլի գունդերը
նախատեցի. ինծի մէկ մա՛րդ մը
տուէք, որ իրարու հետ ծեծ-
11 կուինք ։ Ու երբոր Սաւուղ ու բո-
լոր Իսրայէլը Փղշտացիին աս խօս-
քերը լսեցին, զարհուրեցան, ու
խիստ վախցան ։
12 Եւ Դաւիթ՝ ժԵփրաթացի այս-
ինքն Յուդայի Բեթլեհեմացի Յես-
սէ անունով իմարդու մը որդի էր.
անիկայ Ութը որդի ունէր, ու ա-
նիկայ Սաւուղին օրերը մարդոց մէջ
13 ծեր մարդ կը սեպուէր ։ Եւ Յես-
սէին իրեք մեծ որդիները իր ետեւէն

Ն․ Ք․ ՉՔ․ Իրր 1063
ա Գլ․ Ժգ․ 5։
բ Յես․ ԺԵ․ 35։ Բ Մն․ Իը․ 18։
գ Ա Մն․ Ժա․ 13։
դ Բ Թագ․ Իա․ 19։
ե Յես․ Ժա․ 22։
‡ Կամ՝ ասպար
զ Բ Թագ․ Իա․ 19։
է Գլ․ Ը․ 17։
ը Գլ․ Ժա․ 1։
թ Հմր 26։ Բ Թագ․ Իա․ 21։
ժ Ծն․ Լե․ 19։
ի Հմր 58։ Հռութ․ Դ․ 22։ Գլ․ Ժզ․ 1, 18։
լ Գլ․ Ժզ․ 10, 11։ Տես Ա Մն․ Բ․ 13, 14, 15։

Ն. Ք. ԳՔ. Իրր 1063

ելլելով՝ Սաւուղին ետեւէն պատե-
րազմի գացեր էին. և պատերազմի
ե Գլ. Ժզ. 6. Տ. 9. ա Մն. Բ. 13.
գացող ե իրեք որդւոցը անունները՝
անդրանիկը Եղիաբ, ու երկրորդը
Աբինադաբ, և երրորդը Սամմա
14 էր. Ու Դաւիթ անոր պինտ պզ-
տիկն էր. և իրեք մեծերը Սաւու-
15 ղին ետեւէն գացին. Բայց Դաւիթ՝
Սաւուղին քովէն ելլելով՝ Բեթլէ-
զ Գլ. Ժզ. 19.
հէմ դարձեր էր, զ որ իր հօրը ոչ-
16 խարները արածէ ։ Եւ ան Փղշտա-
ցին քառասուն օր առտու ու իրի-
կուն կը մօտենար, ու շարունակ մենա-
մարտութեան հրաւիրելով կը կենար ։
17 Եւ Յեսսէ իր որդւոյն Դաւիթին
ըսաւ. Քու եղբարցդ համար աս
մէկ արդու բոհրած ցորենը՝ ու աս
տասը հացը առ, բանակը վազէ
18 եղբարցդ քով ։ Եւ աս տասը
գլուխ պանիրը անոնց հազարապե-
է Ծն. ԼԷ. 14.
տին տար, ու է նայէ որ եղբայր-
ներդ ողջ առո՞ղջ են, ու անոնցմէ
19 նշան առ ։ Եւ Սաւուղ ու անոնք
ու բոլոր Իսրայէլի մարդիկները՝
Էլայի հովիտին մէջը՝ Փղշտացւոց
հետ պատերազմ կ'ընէին ։
20 Եւ Դաւիթ առաւօտուն կանուխ
ելաւ, ոչխարները պահապան հովի-
ւին թողուց, ու ան բաները առաւ
գնաց, ինչպէս որ Յեսսէ իրեն
ը Գլ. Իզ. 5.
ապսպրեր էր. ու երբոր ը կառքե-
րուն տեղը հասաւ, զօրքերը կար-
գաւ կը շարուէին, ու պատերազմի
համար բարձր ձայնով կ'աղաղա-
21 կէին. Քանզի Իսրայէլը ու Փղշտա-
ցիք՝ զօրք զօրքի դէմ գունդեր
22 շարեր էին ։ Եւ Դաւիթ իր վրա-
յէն ամանները վար դնելով՝ ա-
մաններու պահապանին ձեռքը
յանձնեց, և դէպ 'ի գունդը վա-
թ Տես Դատ. Ժը. 15.
զեց, ու գնաց թ իր եղբայրներուն
23 ողջութիւնը հարցուց ։ Ու երբոր
անիկայ անոնց հետ կը խօսէր, ա-
հա ան Փղշտացի ախոյեանը Գո-
ղիաթ անունով՝ որ Գեթ քաղաքէն
էր, Փղշտացւոց գունդերէն ելաւ,
ժ Հմր 8.
և ան ժ առջի խօսքերուն պէս զրու-
24 ցեց. ու Դաւիթ լսեց ։ Եւ Իսրա-
յէլի բոլոր մարդիկները երբոր ան
մարդը տեսան, անոր երեսէն փա-
25 խան, ու զարհուրեցան ։ Եւ Իս-
րայէլի մարդիկները ըսին. Աս
ելլող մարդը տեսա՞ք, որ Իսրայէլը
նախատելու կ'ելլէ. ո՛վ որ զանի-
կայ մեռցնէ, թագաւորը մեծ
հարստութիւնով պիտի հարստա-
ի Յես. ԺԵ. 16.
ցնէ զանիկայ, ու ի իր աղջիկը
անոր պիտի տայ, և անոր հօրը
տունը Իսրայէլի մէջ ազատ պիտի
26 ընէ ։ Ու Դաւիթ իր քովը եղող
մարդիկներուն հետ խօսեցաւ՝ ու
լ Գլ. Ժա. 2.
ըսաւ. Աս Փղշտացին մեռցնող՝ և
լ Իսրայէլէն նախատինքը վերցնող
մարդուն ի՞նչ պիտի ըլլայ. քանզի
խ աս անթլփատ Փղշտացին ո՞վ է՝
որ ծ կենդանի Աստուծոյն զօրքե-
27 րը նախատէ ։ Ու ժողովուրդը նոյն
խօսքերը զրուցեց անոր՝ ու ըսաւ.
կ Զանիկայ մեռցնող մարդուն այն-
28 պէս պիտի ըլլայ ։ Եւ անոր մեծ
եղբայրը Եղիաբ՝ երբոր լսեց անոր
խօսիլը ան մարդիկներուն հետ,
հ սաստիկ բարկութեամբ Դաւի-
թին սրդողեցաւ Եղիաբ, ու ը-
սաւ. Դուն ինչո՞ւ հոս իջար, և ան
քիչ ոչխարները անապատին մէջը
որո՞ւն ձգեցիր. ես քու հպարտու-
թիւնդ ու սրտիդ չարութիւնը գի-
տեմ. անտարակոյս դուն պատե-
29 րազմը տեսնելու իջեր ես ։ Եւ
Դաւիթ ըսաւ. Հիմա ի՞նչ ըրի.
30 աս *խօսք չէ՞ ։ Ու անոր քովէն
մէկ ուրիշ մարդու մը դարձաւ, և
ձ նոյն խօսքերը զրուցեց, ու ժողո-
վուրդն ալ առջի խօսքերուն պէս
պատասխան տուին անոր ։
31 Եւ Դաւիթին ըսած խօսքերը լը-
սուեցան. ու երբոր Սաւուղին առ-
ջեւը պատմեցին, Սաւուղ զինք
32 բերել տուաւ զանիկայ ։ Եւ Դա-
ւիթ Սաւուղին ըսաւ. Ղ Անոր պատ-
ճառաւը բնաւ մէկ մարդու մը սիր-
տը չկոտրի. ճ քու ծառադ պիտի եր-
թայ, ու ան Փղշտացիին հետ ծեծ-
33 կուի ։ Եւ Սաւուղ Դաւիթին ը-
սաւ. մ Դուն չես կրնար ան Փղշտա-
ցիին վրայ երթալ, ու անոր հետ
ծեծկուիլ, քանզի դուն մանուկ ես,
ու անիկայ իր մանկութենէն 'ի վեր
34 պատերազմող մարդ մըն է ։ Եւ
Դաւիթ ըսաւ Սաւուղին. Քու
ծառադ երբոր իր հօրը ոչխարները
կ'արածէր, ու առիւծ կամ արջ
կու գար, և հօտերէն ոչխար կը
35 տանէր, Ես անոր ետեւէն երթալով՝
զանիկայ կը զարնէի, ու անոր բեր-
նէն կ'ազատէի. ու երբոր անիկայ
իմ վրաս յարձակէր, զանիկայ մօ-
րուքէն կը բռնէի, կը զարնէի ու
36 կը մեռցնէի ։ Քու ծառադ ա-
ռիւծ ալ մեռցուցած է՝ արջ ալ.
ու աս անթլփատ Փղշտացին ալ
անոնց մէկուն պէս պիտի ըլլայ.
քանզի կենդանի Աստուծոյն զօր-
37 քերը նախատեց ։ Եւ Դաւիթ ը-
սաւ. յ Առիւծին ու արջին ձեռքէն
զիս ազատող Տէրը՝ աս Փղշտացիին
ձեռքէն ալ պիտի ազատէ ։ Եւ
Սաւուղ Դաւիթին ըսաւ. Գնա,
38 ու ն Տէրը քու հետդ ըլլայ ։ Եւ
Սաւուղ իր զէնքերը Դաւիթին
հագցուց, ու անոր գլուխը մէկ
պղնձէ սաղաւարտ մը դրաւ, ու ա-
39 նոր զրահ ալ հագցուց ։ Եւ Դա-
ւիթ զէնքերուն վրայէն Սաւուղին
սուրը մէջքը կապեց, ու սկսաւ քա-

Ն. Ք. ԳՔ. Իրր 1063

խ Գլ. ԺԴ. 6.
ծ Բ Օր. Ե. 26.
կ Հմր 10.
հ Հմր 25.
հ Ծն. ԼԷ. 4, 8, 11. Մատ. Ժ. 36.
* Կամ՝ Իրաւունքով
ձ Հմր 26, 27.
Ղ Բ Օր. Ի. 1, 3.
ճ Գլ. ԺԶ. 18.
մ Տես Թուոց ԺԴ. 32. Բ Օր. Թ. 2.
յ Սաղ. ԺԸ. 16, 17. Կգ. 7. Տե. 11. Բ Կոր. Ա. 10. Բ Տիմ. Դ. 17, 18.
ն Գլ. Ի. 13. Ա Մն. ԻԲ. 11, 16.

Ն. Ք. Գ. Բ. իրր 1063

լել. քանզի սորված չէր. ու Դա-
ւիթ Սաւուղին ըսաւ. Ասոնցմով
չեմ կրնար քալել, քանզի սորված
չեմ. ուստի Դաւիթ զանոնք իր
վրայէն հանեց։
40 Եւ իր ցուպը ձեռքը առաւ, ու
հեղեղատէն իրեն համար հինգ հատ
ողորկ քար ընտրեց, ու զա-
նոնք իր հովուական ամանին այ-
սինքն մախաղին մէջը դրաւ, ու
պարսը ձեռքը բռնելով Փղշտացիին
41 մօտեցաւ։ Եւ Փղշտացին ալ ե-
կաւ ու Դաւիթին մօտեցաւ, և
անոր վահանը վերցընող մարդը ա-
42 նոր առջեն էր։ Ու երբոր Փը-
ղըշտացին նայեցաւ ու Դաւիթը
տեսաւ, զանիկայ արհամարհեց.
քանզի անիկայ կարմիր գունով ու
գեղեցիկ դէմքով պատանի մըն էր։
43 Եւ Փղշտացին ըսաւ Դաւիթին.
Միթէ ես շո՞ւն եմ որ իմ վրաս
ցուպով կու գաս. ու Փղշտացին
իր աստուածներովը Դաւիթը նզո-
44 վեց։ Եւ Փղշտացին ըսաւ Դաւի-
թին. Ինծի եկուր, ու քու մար-
մինդ երկինքի թռչուններուն ու
45 դաշտի գազաններուն տամ։ Եւ
Դաւիթ ըսաւ Փղշտացիին. Դուն
ինծի սրով, նիզակով ու տեգար-
դով կու գաս. բայց ես զօրու-
թեանց Տէրոջը՝ քու նախատած
Իսրայէլի զօրքերուն Աստուծոյն
46 անունովը քեզի կու գամ։ Այսօր
Տէրը քեզ իմ ձեռքս պիտի մատ-
նէ. ու ես քեզ պիտի մեռցընեմ,
ու վրայէդ գլուխդ պիտի առնեմ.
և Փղշտացւոց բանակին դիակուն-
քը այսօր երկինքի թռչուններուն
ու երկրի գազաններուն պիտի տամ.
որպէս զի բոլոր երկիրը գիտնայ
որ Իսրայէլի մէջ Աստուած կայ.
47 Եւ աս բոլոր ժողովքը գիտնան որ
Տէրը սրով ու նիզակով չազա-
տեր. քանզի պատերազմը Տէրոջն
է, ու անիկայ ձեզ մեր ձեռքը պի-
48 տի մատնէ։ Ու երբոր Փղշտացին
ելաւ, ու եկաւ Դաւիթին մօտե-
ցաւ, Դաւիթն ալ շուտով պա-
տերազմի ասպարէզը վազեց Փղշտա-
49 ցին դիմաւորելու։ Եւ Դաւիթ իր
ձեռքը իր մախաղին մէջը խոթեց,
ու անկէ քար մը առաւ, և զանիկայ
պարսով նետեց, ու Փղշտացիին
ճակատը զարկաւ. և քարը անոր
ճակատին մէջը մտաւ. ու անիկայ
50 երեսի վրայ գետինը ինկաւ։ Այս-
պէս Դաւիթ պարսով ու քարով
Փղշտացիին յաղթեց. և զարկաւ
Փղշտացին, ու մեռցուց զանիկայ.
բայց Դաւիթին ձեռքը սուր չկար։
51 Եւ Դաւիթ վազելով Փղշտացիին
վրան կայնեցաւ. ու անոր սուրը
առաւ, պատեանէն հանեց, ու

ը Սաղ. ՃԻԴ. 4. ա Կոր. ա. 27. 28.
յ Գլ. ԺԶ. 12.
— Գլ. ԻԴ. 15. բ Թագ. Գ. 8. ԺԶ. 9. դ Թագ. Ը. 13.
ե Թագ. Ի. 10. 11.
բ Թագ. ԻԲ. 33. 35. Սաղ. ՃԻԴ. 8. ՃԽԵ. 1. բ Կոր. Ժ. 4. Եբր. ԺԱ. 33. 34.
Հմր 10.
Եբր. իմ ձեռքիս մէջ պիտի գոցէ.
բ Օր. ԻԸ. 26.
— Յես. Դ. 24. գ Թագ. Ը. 43. ԺԹ. 36. դ Թագ. ԺԹ. 19. Ես. ԾԲ. 10.
Բ Սաղ. ԽԴ. 6. 7. Ովս. Ա. 7. Զաք. Դ. 6.
բ Մն. Ի. 15.
Գլ. ԻԱ. 9. Տես Դատ. Գ. 31. ԺԵ. 15. Գլ. ԻԴ. 21.

զանիկայ մեռցընելէն ետքը, գլու-
խը անով կտրեց։ Եւ Փղշտացիք
իրենց զօրաւոր մարդուն մեռնի-
52 լը տեսնելով փախան։ Ան ա-
տեն Իսրայէլի ու Յուդայի մար-
դիկները ելան և աղաղակներով
մինչև Գովիտը ու մինչև Ակկա-
րոնի դռները Փղշտացիները հա-
լածեցին, և Փղշտացւոց մեռ-
ցուածները Սագարիմի ճամ-
բուն վրայ, ու մինչև Գէթը ու
53 Ակկարոնը ինկան։ Եւ Իսրայէլի
որդիքը Փղշտացիները հալածելէն
ետ դարձան, ու անոնց բանակը
54 կողոպտեցին։ Եւ Դաւիթ Փղը-
շտացիին գլուխը առաւ, ու զանի-
կայ Երուսաղէմ տարաւ. բայց ա-
նոր զէնքերը իր վրանին մէջը դրաւ։
55 Ու երբոր Սաւուղ Դաւիթը տե-
սաւ, որ Փղշտացիին դէմ ելեր է,
իր զօրավարին Աբեններին ըսաւ.
Ով Աբեններ, աս պատանին ո-
րո՞ւն տղան է։ Ու Աբեններ ը-
սաւ. Կենդանի է քու անձդ, ով
56 թագաւոր, որ չեմ գիտեր։ Եւ
թագաւորը ըսաւ. Հարցուր թէ
57 աս պատանին որո՞ւն տղան է։ Ու
երբոր Դաւիթ Փղշտացին մեռցը-
նելէն ետ դարձաւ, Աբեններ ա-
ռաւ զանիկայ, ու Սաւուղին առ-
ջեւ տարաւ. ու Փղշտացիին գլու-
58 խը անոր ձեռքն էր։ Եւ Սաւուղ
ըսաւ անոր. Որո՞ւն տղան ես դուն
պատանի։ Ու Դաւիթ ըսաւ.
Քու ծառայիդ Բեթլեհեմացի Յես-
սէին տղան եմ։

Ն. Ք. Գ. Բ. իրր 1063
Եբր. ԺԱ. 34.
Յես. ԺԵ. 36.
[illegible] 21. 22.
ը Հմր 54.
ռ Հմր 12.

## ԳԼ. ԺԸ

1 Յովնաթան Դաւիթը կը սիրէ։ 5 Սաւուղ Դաւիթին եղած գովաբանութեանը համար կը նախանձի, 19 ու իր բարկութեան ատենը կ'ուզէ զանիկայ մեռցնել։ 12 Սաւուղ կը վախնայ անոր բարի յաջողութեանը համար, 17 ու անոր իր աղջիկը տալ կ'ուզէ որ անոր որոգայթ մը ըլլայ։ 22 Դաւիթ համոզուելով թագաւորին փեսայ ըլլալու, կ'երթայ Փղշտացւոցմէ երկու հարիւր անթլփատութիւն կը բերէ՝ Մեղքողին օժիտ ըլլալու համար։ 28 Սաւուղին ատելութիւնը, ու Դաւիթին փառքը կ'աւելնայ։

1 Ու երբոր Սաւուղին հետ խօսիլը
լմնցուց, Յովնաթանին սիր-
տը Դաւիթին սրտին հետ կապուե-
ցաւ. ու Յովնաթան իր անձին
2 պէս սիրեց զանիկայ։ Եւ նոյն օրը
Սաւուղ զանիկայ առաւ, ու թող
չտուաւ որ իր հօրը տունը դառ-
3 նայ։ Եւ Յովնաթան Դաւիթին
հետ ուխտ ըրաւ. քանզի իր անձին
4 պէս կը սիրէր զանիկայ։ Ու Յով-
նաթան իր վրայի վերարկուն հա-
նեց, և զանիկայ ու իր զէնքերը,
մինչև իր սուրը, իր աղեղը ու իր
5 գօտին Դաւիթին տուաւ։ Եւ
Դաւիթ ամէն տեղ կ'երթար ուր

— Ծն. ԽԴ. 30.
Բ Գլ. ԺԹ. 2. Ի. 17. բ Թագ. Ա. 26. բ Օր. ԺԳ. 6.
Գլ. ԺԶ. 15.
Կամ՝ հանդերձները.

Ն. Ք. ԶՔ.
ԻՐՐ 1063

որ Սաւուղ զանիկայ կը խրկէր . ու
[ր] իմաստութեամբ կը վարուէր . և
Սաւուղ զանիկայ պատերազմական
մարդիկներուն վրայ կեցուց , ու
բոլոր ժողովուրդին ու Սաւուղին
ծառաներուն ալ հաճոյ եղաւ ։
6 [ս] Ու երբոր Դաւիթ՝ Փղշտացին
[ւ] մեռցընելէն կը դառնար , ու զօրք-
երը կու գային , Իսրայէլի բոլոր քա-
ղաքներէն [ի] կնիկները երգելով՝ ու
պար բռնելով , թմբուկներով ,
ուրախութեամբ ու ծնծղաներով՝
Սաւուղ թագաւորը դիմաւորելու
7 ելան ։ Եւ [լ] պար բռնող կնիկները
պատասխան տալով կ՚երգէին ու
կ՚ըսէին . [ի] Սաւուղ իր հազարա-
ւորները զարկաւ , ու Դաւիթ իր
8 բիւրաւորները ։ Եւ Սաւուղ խիստ
բարկացաւ , ու աս խօսքին համար
[է] դժուարեցաւ , ու ըսաւ . Բիւրա-
ւորները Դաւիթին տուին , ու հա-
զարաւորները ինծի տուին . ու հի-
մա [ը] թագաւորութենէ ուրիշ՝ ի՞նչ
9 պակաս մնաց անոր ։ Եւ ան օրէն
՚ի վեր՝ Սաւուղ ծուռ աչքով կը
նայէր Դաւիթին ։
10 Ու հետևեալ օրը [թ] Սաւուղին վը-
րայ Աստուծմէ չար ոգի եկաւ , [ի] ու
տանը մէջ մարգարէութիւն ըրաւ .
և Դաւիթ ուրիշ անգամներու պէս
իր ձեռքովը [լ] քնար կը զարնէր . [ե] ու
11 Սաւուղին ձեռքը նիզակ կար ։ Եւ
Սաւուղ [ի] նիզակը նետեց՝ ըսելով .
Դաւիթը պատին վրայ պիտի գա-
մեմ . բայց Դաւիթ անոր երեսէն
երկու անգամ մէկդի քաշուեցաւ ։
12 Ուստի Սաւուղ [ծ] Դաւիթին երեսէն
կը վախնար . քանզի [կ] Տէրը անոր
հետն էր . բայց [հ] Սաւուղէն հեռա-
13 ցեր էր ։ Եւ Սաւուղ զանիկայ իր
քովէն հեռացուց , ու զանիկայ
հազարապետ ըրաւ . ու [ձ] անիկայ
ժողովուրդին առջևը կ՚ելլէր կը
14 մտնէր ։ Եւ Դաւիթ իր ամէն ճամ-
բաներուն մէջը [ղ] իմաստութեամբ
կը վարուէր . ու [ճ] Տէրը անոր հետն
15 էր ։ Եւ Սաւուղ անոր այնքան ի-
մաստութեամբ վարուիլը տեսնե-
16 լով , անոր երեսէն կը վախնար ։ Ու
[մ] բոլոր Իսրայէլը և Յուդան՝ Դա-
ւիթը կը սիրէին . քանզի անոնց
առջևը անիկայ կ՚ելլէր կը մտնէր ։
17 Եւ Սաւուղ Դաւիթին ըսաւ . Ա-
հա իմ մեծ աղջիկս Մերոբը [յ] քե-
զի կնիկ պիտի տամ . միայն թէ
դուն ինծի զօրաւոր մէ՛կ մը եղիր ,
ու [ն] Տէրոջը պատերազմները պատե-
րազմէ՛ . քանզի Սաւուղ ըսաւ .
[շ] անոր վրայ իմ ձեռքս չըլլայ , այլ
Փղշտացւոց ձեռքը անոր վրայ ըլ-
18 լայ ։ Եւ Դաւիթ Սաւուղին ըսաւ .
[ո] Ես ո՞վ եմ , ու իմ կեանքս կամ
իմ հօրս ազգատոհմը Իսրայէլի մէջ

[ր] Հմր 14. 15.
30 ։
[ի] Ել. ժե.
20 ։ Դատ.
ժա. 34 ։
[լ] Ել. ժե.
21 ։
[ի] Գլ. . իա.
11 ։ իթ. 5 ։
[է] Ժող. դ. 4 ։
[ը] Գլ. ժե.
28 ։
[թ] Գլ. ժզ.
14 ։
[ի] Գլ. ժթ.
24 ։ Գթագ.
ժը. 29 ։
[լ] Գոր. ժզ.
16 ։
[ւ] Գլ. ժթ.
9 ։
[ի] Գլ. ժթ.
10 ։ ի. 33 ։
Առակ. իէ.
4 ։
[ծ] Հմր 15. 29 ։
[կ] Գլ. ժզ.
13. 18 ։
[հ] Գլ. ժզ.
14 ։ իը. 15 ։
[ձ] Հմր 16 ։
Թուռ. իէ.
17 ։ բթագ.
ե. 2 ։
[ղ] Հմր 5 ։
[ճ] Ծն. լթ.
2, 3, 23 ։
Յես. զ. 27 ։
[մ] Հմր 5 ։
[յ] Գլ. ժէ.
25 ։
[ն] Թուռ. լբ.
20, 27, 29 ։
Գլ. իե. 28 ։
[շ] Հմր 21,
25 ։ բթագ.
ժբ. 9 ։
[ո] Տես Հմր
23 ։ Գլ. թ.
21 ։ բթագ.
է. 18 ։

ի՞նչ է՝ որ թագաւորին փեսայ ըլ-
19 լամ ։ Եւ Սաւուղին աղջիկը Մե-
րովբ՝ Դաւիթին տրուելու ատենը՝
[չ] Մաուլացի [պ] Ադրիելին տրուե-
ցաւ ։
20 [ջ] Ու Սաւուղին Մեղքող աղջիկը
կը սիրէր Դաւիթը . ու երբոր Սա-
ւուղին իմացուցին , աս բանը ա-
21 նոր աչքերուն հաճոյ երևցաւ ։ Եւ
Սաւուղ ըսաւ . Ես զանիկայ անոր
տամ՝ որ [ռ] անոր որոգայթ ըլլայ ,
ու [ս] Փղշտացւոց ձեռքը անոր վրայ
ըլլայ ։ Ուստի Սաւուղ Դաւիթին
ըսաւ . Ինծի [վ] այսօր * երկրորդ փե-
22 սայ եղիր ։ Եւ Սաւուղ իր ծա-
ռաներուն հրամայեց , որ Դաւի-
թին հետ ծածկաբար խօսին , ու
ըսեն . Ահա թագաւորը քեզի հաւ-
ներ է , ու անոր բոլոր ծառաները
քեզ կը սիրեն . ուստի հիմա թա-
23 գաւորին փեսայ եղիր ։ Եւ Սաւու-
ղին ծառաները աս խօսքերը Դա-
ւիթին ականջներուն զրուցեցին .
ու Դաւիթ ըսաւ . Թագաւորի
փեսայ ըլլալը ձեր աչքին պզտի՞կ
բան կ՚երևնայ . քանզի ես աղքատ
24 ու աննշան մարդ մըն եմ ։ Եւ
Սաւուղին ծառաները անոր իմա-
ցուցին՝ ու ըսին . Դաւիթ այսպէս
25 խօսեցաւ ։ Եւ Սաւուղ ըսաւ .
Դաւիթին այսպէս ըսէք . Թագա-
ւորը [տ] ուրիշ օժիտ չուզեր , բայց
միայն Փղշտացւոց հարիւր ան-
թլփատութիւնը , որպէս զի [ր] թա-
գաւորին թշնամիներէն վրէժ առ-
նուի . (ու [ց] Սաւուղ կը խորհէր
Դաւիթը Փղշտացւոց † ձեռքը
26 մատնել ։) Ու երբոր անոր ծա-
ռաները աս խօսքերը Դաւիթին ի-
մացուցին , աս բանը Դաւիթին
աչքերուն աղէկ երևցաւ որ թա-
գաւորին փեսայ ըլլայ ։ Ուստի
27 [ւ] օրերը լմննալէն առաջ՝ Դաւիթ
ելաւ , ու [փ] իր մարդիկներովը գը-
նաց , և Փղշտացիներէն երկու հա-
րիւր մարդ մեռցուց . ու [ք] Դաւիթ
անոնց անթլփատութիւնները բե-
րաւ , ու զանոնք լման թագաւո-
րին տուին , որ թագաւորին փեսայ
ըլլայ ։ Ու Սաւուղ իր Մեղքող
28 աղջիկը կնիկ տուաւ անոր ։ Եւ
Սաւուղ երբոր տեսաւ ու հասկը-
ցաւ որ Տէրը Դաւիթին հետն է ,
ու Սաւուղին Մեղքող աղջիկը զա-
29 նիկայ կը սիրէ , Սաւուղ՝ ալ աւե-
լի վախցաւ Դաւիթէն . և Սաւուղ
շարունակ Դաւիթին թշնամու-
30 թիւն կ՚ընէր ։ Ու Փղշտացւոց իշ-
խանները [օ] ելան , և անոնց ելլելէն
ետքը՝ Դաւիթ՝ Սաւուղին ամէն
ծառաներէն աւելի [ֆ] իմաստու-
թեամբ կը վարուէր . ու անոր ա-
նունը շատ [ա] հռչակաւոր եղաւ ։

Ն. Ք. ԶՔ.
ԻՐՐ 1063

[չ] Դատ. է.
22 ։
[պ] բ թագ. ի
իա. 8 ։
[ջ] Հմր 28 ։
[ռ] Ել. ժ. 7 ։
[ս] Հմր 17 ։
[վ] Տես Հմր
26 ։
* Կամ՝ երկու
աղջիկնե-
րուս մէկովը
[տ] Ծն. լդ.
12 ։ Ել. իբ.
17 ։
[ր] Գլ. ժդ. 24 ։
[ց] Հմր 17 ։
† Կամ՝ ձեռ-
քովը կոր-
սնցընել ։
[ւ] Տես Հմր
21 ։
[փ] Հմր 13 ։
[ք] բթագ. գ.
14 ։
[օ] բ թագ.
ժա. 1 ։
[ֆ] Հմր 5 ։
[ա] Գլ. իզ.
21 ։ դթագ.
ա. 13 ։ Սաղ.
ճժզ. 15 ։

Ն. Ք. Զ. Ք. իբր 1063

## ԳԼ. ԺԹ

1 Յովնաթան Դաւիթին կը պատմէ իր հօրը դիտաւորութիւնը՝ զանիկայ մեռցնելու վրայով. 4 Իր հայրը հաշտութեան կը համոզէ ։ 8 Նոր պատերազմի մը մէջ Դաւիթ յաջողութիւն գտնելով՝ Սաւուղին անիրաւ բարկութիւնը անոր դէմ կը բորբոքի ։ 12 Մեղքող՝ Դաւիթին անկողինին մէջ արձան մը դնելով՝ իր հայրը կը խաբէ ։ 18 Դաւիթ՝ Նաւաթ կու գայ Սամուէլին ։ 20 Դաւիթը բռնելու համար՝ Սաւուղին խրկած մարդիկը, 22 ու Սաւուղ ինքն ալ՝ կը մարգարէանան ։

1 Ու Սաւուղ իր որդւոյն Յովնա-
թանին ու իր ամէն ծառանե-
րուն ըսաւ որ Դաւիթը մեռցնեն ։
2 Բայց Սաւուղին որդին Յովնաթա-
նը՝ [ա] Դաւիթը շատ կը սիրէր . ու
Յովնաթան Դաւիթին իմացուց ու
ըսաւ . Իմ հայրս Սաւուղ քեզ
մեռցնել կ'ուզէ . ուրեմն հիմա
մինչև առտու զգոյշ կենաս , ու մէկ
ծածուկ տեղ մը նստէ ու պահուէ .
3 Ու ես ելլեմ , և քու նստած արտիդ
մէջը հօրս քովը կայնիմ , ու քեզի
համար իմ հօրս հետ խօսիմ , և
ինչ որ իմանամ , քեզի պատմեմ ։
4 Ու Յովնաթան [բ] Դաւիթին վրա-
յով աղէկ խօսքեր զրուցեց իր հօրը
Սաւուղին , և անոր ըսաւ . Ո՛վ
թագաւոր՝ [գ] քու ծառայիդ Դաւի-
թին դէմ մեղք մի՛ գործեր . քան-
զի անիկայ քեզի դէմ մեղք մը չը-
րաւ , ու անոր գործերը քեզի շատ
5 աղէկ են ։ Ինչու որ [դ] իր հոգին
ձեռքին մէջը դրաւ , ու [ե] Փղշտա-
ցին զարկաւ . և [զ] Տէրը բոլոր Իս-
րայէլին մէկ մեծ փրկութիւն մը
շնորհեց . դուն տեսար ու ուրա-
խացար . Եւ ինչո՞ւ համար Դաւի-
թը առանց պատճառի մեռցնե-
լով՝ [է] անմեղ արիւնի մեղք պիտի
6 մտնես ։ Եւ Սաւուղ Յովնաթա-
նին խօսքը մտիկ ըրաւ . ու Սա-
ւուղ երդում ըրաւ՝ ըսելով . Տէ-
րը կենդանի է որ անիկայ պիտի
7 չմեռցուի ։ Եւ Յովնաթան Դաւի-
թը կանչեց . ու Յովնաթան աս
բոլոր խօսքերը անոր պատմեց . և
Յովնաթան Դաւիթը Սաւուղին
տարաւ , ու անիկայ [թ] առջինին պէս
անոր առջևը կը կայնէր ։
8 Եւ նորէն պատերազմ եղաւ . ու
Դաւիթ ելաւ Փղշտացւոց հետ
պատերազմ ըրաւ . ու անոնց մէջը
մէկ մեծ կոտորած մը ըրաւ . և
9 անոնք անոր առջևէն փախան ։ Ու
[ժ] Սաւուղին վրայ Տէրոջմէ չար ոգի
եկաւ . և անիկայ իր տունը կը
նստէր , ու նիզակը իր ձեռքն էր .
Դաւիթն ալ իր ձեռքովը նուագա-
10 րանը կը զարնէր ։ Եւ Սաւուղ
ուզեց որ Դաւիթը նիզակով զար-
նէ , ու պատին վրայ գամէ . բայց
անիկայ Սաւուղին երեսէն մէկդի
քաշուեցաւ , և Սաւուղ նիզակը
պատին զարկաւ . ու Դաւիթ փա-
խաւ , և ան գիշերը ազատեցաւ ։
11 [ժա] Բայց Սաւուղ Դաւիթին տունը
մարդիկներ խրկեց , որ զանիկայ
պաշարեն , ու առաւօտուն մեռցը-
նեն ։ Սակայն Դաւիթին կնիկը
Մեղքող անոր իմացուց՝ ու ըսաւ .
Թէ որ աս գիշեր քու անձդ չապրե-
ցընես , վաղը քեզ պիտի մեռ-
12 ցընեն ։ Ուստի Մեղքող [ժբ] Դաւի-
թը պատուհանէն վար իջեցուց . և
անիկայ գնաց՝ փախաւ ու ազա-
13 տեցաւ ։ Ու Մեղքող մէկ * արձան
մը առաւ , և զանիկայ անկողինին
մէջը դրաւ , ու անոր գլխուն տակը
այծի մազէ բարձ մը դրաւ , և զա-
14 նիկայ ծածկոցով մը ծածկեց ։ Ու
երբոր Սաւուղ մարդիկներ խրկեց
Դաւիթը բռնելու համար , անիկայ
15 ըսաւ . Հիւանդ է ։ Եւ Սաւուղ
նորէն մարդիկները խրկեց Դաւիթը
տեսնելու համար , ու ըսաւ . Զա-
նիկայ անկողինովը ինծի՛ բերէք , որ
16 մեռցընեմ ։ Ուստի ան մարդիկ-
ները եկան . և ահա անկողինին
մէջը մէկ արձան մը կար , ու գը-
լխուն տակը այծի մազէ բարձ մը ։
17 Եւ Սաւուղ Մեղքողին ըսաւ . Զիս
ինչո՞ւ համար այսպէս խաբեցիր ,
ու իմ թշնամիս թող տուիր , ու
ազատեցաւ ։ Ու Մեղքող Սաւու-
ղին ըսաւ . Անիկայ ինծի ըսաւ .
Թո՛ղ տուր զիս որ երթամ . [ժգ] Ին-
չո՞ւ մեռցընեմ քեզ ։
18 Այսպէս փախաւ Դաւիթ ու ա-
զատեցաւ , և Ռամա գնաց Սա-
մուէլին քովը , ու անոր պատմեց
ան ամէնը որ Սաւուղ ըրեր էր ի-
րեն ։ Ետքը անիկայ Սամուէլին
հետ գնաց , ու Նաւաթի մէջ բը-
19 նակեցան ։ Եւ Սաւուղին իմացու-
ցին ու ըսին . Ահա Դաւիթը Ռա-
20 մայի Նաւաթին մէջն է ։ Ան ա-
տենը [ժդ] Սաւուղ մարդիկներ խրկեց
որ Դաւիթը բռնեն , ու անոնք
մարգարէութիւն ընող մարգարէ-
ներուն ժողովքը՝ և անոնց վրայ
կեցող Սամուէլը երբոր տեսան ,
Աստուծոյ Հոգին Սաւուղին խրկած
մարդիկներուն վրայ եկաւ , ու ա-
նոնք ալ [ժե] մարգարէութիւն ըրին ։
21 Ու երբոր Սաւուղին իմացուցին ,
ուրիշ մարդիկներ խրկեց , և անոնք
ալ մարգարէութիւն ըրին ։ Ու
Սաւուղ նորէն երրորդ անգամ մար-
դիկներ խրկեց , և անոնք ալ մար-
22 գարէութիւն ըրին ։ Ան ատենը
ինքն ալ Ռամա գնաց , ու մինչև
Սոկքոյի մեծ ջրհորը գալով , հար-
ցուց ու ըսաւ . Սամուէլը ու Դա-
ւիթը ո՞ւր են ։ Եւ [illegible] մէկը
ըսաւ . Ահա անոնք Ռամայի Նա-
23 ւաթն են ։ Ուստի Ռամայի Նաւա-

Left margin notes:
ա Գլ. ժը. 1 ։
բ Առակ. լա. 8, 9 ։
գ Ծն. խբ. 22 ; Սաղ. լե. 12 ; ճթ. 5 ; Առակ. ժէ. 13 ; Երեմ. ժը. 20 ։
դ Դատ. թ. 17 ; ժբ. 3 ; Գլ. իը. 21 ; Սաղ. ճժթ. 109 ։
ե Գլ. ժէ. 49, 50 ։
զ ա Թագ. ժա. 13 ; ա Մն. ժա. 14 ։
է Գլ. ի. 32 ; ը Մատ. իէ. 4 ։
թ Գլ. ժզ. 21 ; ժը. 2, 13 ։
իբր 1062
ժ Գլ. ժզ. 14 ; ժը. 10, 11 ։

Right margin notes:
Ն. Ք. Զ. Ք. իբր 1062
ժա Սաղ. ծթ. ին վերնագիրը ։
ժբ Յես. բ. 15 ; Գոր. թ. 24, 25 ։
* Եբր. Թերափիմ. Ծն. լա. 19 ; Դատ. ժէ. 5 ։
ժգ Բ Թագ. բ. 23 ։
ժդ Տես Յօհ. է. 32, 45, և ։ ա Կոր. ժդ. 3, 24, 25 ; Գլ. ժ. 5, 6 ։
ժե Թուոց ժա. 25 ; Յովէլ. բ. 28 ։

Ն. Ք. ԳՔ. ԹՐՐ 1062

յ Գլ. Ժ. 10։
ղ Եսայ. Ի. 2։
ճ Միք. Ա. 8։ Տես Բ Թագ. Զ. 14, 20։
մ Թուոց. ԻԴ. 4։
յ Գլ. Ժ. 11։

թը գնաց. և անոր վրայ ալ [յ]Աս-
տուծոյ Հոգին եկաւ, ու մինչև
Ռամայի Նաւաթը հասնիլը՝ ճամ-
բան երթալով մարգարէութիւն
24 կ'ընէր։ [ղ]Եւ անիկայ ալ իր լա-
թերը հանեց, ու Սամուէլին առ-
ջևը անիկայ ալ մարգարէութիւն
կ'ընէր. և ան բոլոր օրը ու բոլոր
գիշերը [ճ]մերկ [մ]ինկաւ մնաց. ա-
նոր համար կ'ըսեն թէ՝ [յ]Սաւուղն
ալ մարգարէներուն մէջն է։

## ԳԼ. Ի

1 Դաւիթ իր ապահովութեանը համար Յովնաթանին հետ խորհուրդ կ'ընէ։ 11 Յովնաթան ու Դաւիթ երդումով կը նորոգեն իրենց ուխտը։ 18 Յովնաթանին՝ Դաւիթին տուած նշանը։ 34 Սաւուղ Դաւիթին երթալը իմանալով՝ Յովնաթանը մեռցնել կ'ուզէ։ 35 Յովնաթան սիրով կը զատուի Դաւիթէն։

1 Եւ Դաւիթ Ռամայի Նաւաթէն
փախաւ, ու գնաց Յովնաթա-
նին առջևը ըսաւ. Ես ի՞նչ ըրեր
եմ, յանցանքս ի՞նչ է, ու ի՞նչ
մեղք գործեր եմ քու հօրդ առջևը,
որ անիկայ զիս մեռցնել կ'ուզէ։
2 Եւ Յովնաթան ըսաւ անոր. Քա՛ւ
լիցի, դուն պիտի չմեռնիս. ահա
իմ հայրս մեծ կամ պզտիկ բան մը
չըներ՝ առանց *ինծի յայտնելու.
ու իմ հայրս ինչո՞ւ համար աս բա-
նը ինծմէ պիտի պահէ. ատանկ
3 բան չկայ։ Եւ Դաւիթ երդում
ալ ըրաւ, ու ըսաւ. Քու հայրդ
աղէկ գիտէ որ ես քու առջևդ շը-
նորհք գտեր եմ. անոր համար կ'ը-
սէ թէ՝ Յովնաթան աս բանը չգիտ-
նայ, չըլլայ որ վշտանայ. բայց
կենդանի է Տէր, ու կենդանի է
քու անձդ, որ իմ ու մահուան
մէջտեղը միայն մէկ քայլ մը մնացեր
4 է։ Եւ Յովնաթան ըսաւ Դաւի-
թին. †Սրտիդ ուզած բանը ինծի
5 ըսէ, ու ես քեզի ընեմ։ Եւ Դա-
ւիթ ըսաւ Յովնաթանին. Ահա
վաղը [ա]ամսագլուխ է, ու պէտք է
որ ես թագաւորին հետ կերակուր
ուտելու համար նստիմ.
սակայն զիս թող տուր, որ մինչև
երրորդ օրուան իրիկունը [բ]դաշտին
6 մէջը պահուիմ. Թէ որ քու հայրդ
զիս փնտռելու ըլլայ, ըսես որ,
Դաւիթ ինծի շատ աղաչեց որ ար-
տօրնօք [գ]իր քաղաքը Բեթլեհէմ
երթայ. քանզի հոն իր բոլոր ազ-
գատոհմին տարեկան [դ]զոհը կ'ըլլայ։
7 [ե]Թէ որ այսպէս ըսէ՝ Աղէկ, քու
ծառայիդ խաղաղութիւն է. բայց
թէ որ խիստ բարկանայ, գիտցիր
որ անիկայ որոշեր է ինծի չարու-
8 թիւն ընելու։ Եւ ծառայիդ [ե]ո-
ղորմութիւն ըրէ. քանզի [ը]դուն
քու ծառայիդ հետ Տէրոջը առջև
նախ ուխտ ըրիր. ու [թ]թէ որ իմ

*Եբր. իմ ականջիս. Հմր 12. Գլ. Թ. 15։
†Եբր. Ի՞նչ որ քու անձդ ինծի ըսէ։
ա Թուոց. Ժ. 10. ԻԸ. 11։
բ Գլ. ԺԹ. 2։
գ Գլ. ԺԶ. 4։
դ Գլ. Թ. 12։
ե Տես Բ Օր. Ա. 23։ Բ Թագ. ԺԵ. 4։
զ Գլ. ԻԵ. 17։ Եսթ. Է. 7։
է Յես. Բ. 14։
ը Հմր 16։ Գլ. ԺԸ. 3։ ԻԳ. 18։
թ Բ Թագ. ԺԴ. 32։

վրաս մէկ յանցանք մը կայ, դո՛ւն
մեռցուր զիս. ինչո՞ւ համար զիս
9 քու հօրդ տանիս։ Եւ Յովնաթան
ըսաւ. Քաւ լիցի, որ ես ստոյգ
գիտնալով թէ իմ հօրս կողմանէ
քեզի համար չարիք որոշուած է,
10 քեզի չիմացընեմ։ Ու Դաւիթ ը-
սաւ Յովնաթանին. Հապա թէ որ
քու հայրդ քեզի խստութեամբ
պատասխան տայ, ինծի ո՞վ պիտի
11 իմացընէ։ Եւ Յովնաթան ըսաւ
Դաւիթին. Եկուր՝ դաշտը ելլենք.
ու երկուքնին դաշտը ելան։
12 Եւ Յովնաթան ըսաւ Դաւիթին.
Կենդանի է Իսրայէլին Տէր Աստուա-
ծը. թէ որ վաղը աս ատենս կամ
մէկալ օր իմ հայրս քննելով տես-
նեմ թէ՝ Դաւիթին համար աղէ-
կութիւն մը կայ, և նոյն ատենը
մարդ չղրկեմ ու [ժ]քեզի չյայտնեմ,
13 [ի]Տէրը Յովնաթանին այսպէս՝ ու
ասկէ աւելի ընէ. բայց թէ որ իմ
հայրս քեզի չարութիւն մը ընել
ուզէ, զանիկայ ալ քեզի պիտի յայտ-
նեմ, ու քեզ պիտի արձակեմ, որ
խաղաղութեամբ երթաս, ու [լ]Տէ-
րը քու հետդ ըլլայ, ինչպէս որ իմ
14 հօրս հետն էր։ Եւ ո՛չ միայն իմ
կենդանութեանս ատենը դուն ին-
ծի Տէրոջը ողորմութիւնը ընես՝ որ
15 ես չմեռնիմ, Մանաւանդ [խ]քու ո-
ղորմութիւնդ իմ տունէս յաւի-
տեան չկտրես, ո՛չ ալ ան ատենը՝
երբոր Տէրը Դաւիթին բոլոր թշնա-
միները երկրիս վրայէն վերցնէ։
16 Եւ Յովնաթան Դաւիթին տանը
հետ դաշնակցութիւն ըրաւ, ու
ըսաւ. [ծ]Տէրը Դաւիթին թշնամի-
17 ներէն վրէժ առնէ։ Ու Յովնաթան
Դաւիթին նորէն երդում ընել
տուաւ՝ զանիկայ սիրելուն համար.
[կ]քանզի զանիկայ իր անձին պէս կը
18 սիրէր։ Եւ Յովնաթան անոր ը-
սաւ. [հ]Վաղը ամսագլուխ է, ու
դուն պիտի փնտռուիս. քանզի քու
19 տեղդ պարապ պիտի մնայ։ Ու եր-
րորդ օրը շուտով իջնես, և գաս
[ձ]ան տեղը՝ ուր որ գործին օրը պա-
հուեցար, ու Եզելի քարին քովը
20 նստիս։ Ու ես անոր քովը՝ նշանի
մը նետելու պէս՝ իրեք նետ պիտի
21 նետեմ։ Եւ ահա մանչը պիտի
ղրկեմ՝ ըսելով. Գնա՛ նետերը գը-
տիր. ու թէ որ մանչուն ըսեմ.
Ահա նետերը քեզմէ ասդին են, զա-
նոնք ա՛ռ. ան ատենը գաս. քանզի
քեզի խաղաղութիւն է, և [ղ]Տէրը
22 կենդանի է որ բան մը չկայ. Բայց
թէ որ մանչուն այսպէս ըսեմ. Ա-
հա նետերը քեզմէ անդին է. ան ա-
տենը երթաս. քանզի Տէրը քեզ կը
23 ղրկէ։ Ու [ճ]աս խօսքիս համար՝ որ
ես ու դուն խօսեցանք՝ ահա Տէրը

Ն. Ք. ԳՔ. ԹՐՐ 1062

ժ Հմր 2։
ի Հռութ. Ա. 17։
լ Յես. Ա. 5։ Գլ. ԺԷ. 37։ Ա Մն. ԻԲ. 11, 16։
խ Բ Թագ. Թ. 1, 3, 7։ ԻԱ. 7։
ծ Գլ. ԻԵ. 22։ Տես Գլ. ԼԱ. 2։ Բ Թագ. Դ. 7։ ԻԱ. 8։
կ Գլ. ԺԸ. 1։
հ Հմր 5։
ձ Գլ. ԺԹ. 2։
ղ Երեմ. Դ. 2։
ճ Հմր 14, 15. 42։

Ն. Ք. Գ. Ք. Իրր 1062

իմ ու քու մէջդ յաւիտեան վկայ
ըլլայ ։
24 Ուստի Դաւիթ դաշտին մէջը
պահուեցաւ ․ և ամսագլուխը հաս-
նելով՝ թագաւորը կերակուր ուտե-
25 լու համար սեղան նստաւ ։ Եւ թա-
գաւորը իր սովորութեանը պէս իր
աթոռը պատին քովինոր աթոռը
նստաւ , ու Յովնաթան ոտք ելաւ ,
և Սաւուղին քովը Աբենները նըս-
տաւ , ու Դաւիթին տեղը պարապ
26 մնաց ։ Եւ Սաւուղ ան օրը բան
մը չխօսեցաւ . քանզի ըսաւ . անոր
բան մը պատահեր է . անիկայ մա-
քուր չէ ․ անտարակոյս մաքուր
27 պիտի չըլլայ ։ Ու հետեւեալ օրը՝
ամսուն երկրորդ օրն ալ Դաւիթին
տեղը պարապ էր . ուստի Սաւուղ
իր որդւոյն Յովնաթանին ըսաւ ․
Յեսսէին որդին ինչո՞ւ համար երէկ
28 ու այսօր սեղանը չեկաւ ։ Եւ Յով-
նաթան Սաւուղին պատասխան
տուաւ . Դաւիթ ինծի շատ աղա-
29 չեց որ Բեթլեհէմ երթայ , Ու ը-
սաւ . Շնորհք ըրէ , զիս խրկէ .
քանզի ան քաղաքին մէջը մեր ազ-
գատոհմը զոհ կ'ընէ . ու իմ եղ-
բայրս ինծի պատուիրած է . և թէ
որ քու աչքերուդ առջեւը շնորհք
գտեր եմ , կ'աղաչեմ՝ զիս թող
տուր որ երթամ , ու եղբայրներս
տեսնեմ . աս պատճառաւ թագա-
30 ւորին սեղանը չեկաւ ։ Եւ Սա-
ւուղին բարկութիւնը բորբոքեցաւ
Յովնաթանին դէմ , ու անոր ը-
սաւ . Ո՛վ ապստամբ ու չար զա-
ւակ . ես չե՞մ գիտեր որ դուն
Յեսսէին որդին ընտրեցիր քեզ ու
մայրդ խայտառակելու համար ․
31 Քանզի քանի որ Յեսսէին որդին
երկրիս վրայ ողջ է , դուն պիտի
չհաստատուիս , ոչ ալ քու թա-
գաւորութիւնդ . ուստի հիմա մարդ
խրկէ , ու զանիկայ ինծի բեր ,
քանզի անիկայ մահու արժանի է ։
32 Եւ Յովնաթան իր հօրը Սաւուղին
պատասխան տուաւ ու ըսաւ ․
Ինչո՞ւ համար պիտի մեռցուի . ա-
33 նիկայ ի՞նչ ըրաւ ։ Եւ Սաւուղ
նիզակը նետեց անոր , որ զանիկայ
զարնէ . ան ատենը Յովնաթան
իմացաւ որ իր հայրը որոշեր է Դա-
34 ւիթը մեռցնել ։ Ու Յովնաթան
սաստիկ բարկութեամբ սեղանէն
ելաւ , ու ամսուն երկրորդ օրը կե-
րակուր չկերաւ . քանզի Դաւիթին
համար սիրտը կոտրեցաւ , որով-
հետեւ իր հայրը զանիկայ անարգեց ։
35 Եւ Յովնաթան առաւօտուն դաշ-
տը ելաւ , ինչպէս որ Դաւիթին
հետ ժամանակ որոշեր էր , ու իր
36 հետը պզտիկ մանչ մը կար ։ Եւ
իր մանչուն ըսաւ . Վազէ , ու աս

Ն. Ք. Գ. Ք. Իրր 1062

իմ նետելու նետերս գտիր . ու
մանչուն վազած ատենը՝ անիկայ
37 նետը անկէ անդին նետեց ։ Ու
երբոր մանչը Յովնաթանին նետած
նետին տեղը գնաց , Յովնաթան
մանչուն ետեւէն կանչելով ըսաւ ․
38 Ահա՛ նետը քեզմէ անդին է ։ Եւ
Յովնաթան մանչուն ետեւէն կան-
չեց . Շուտ ըրէ , արտորցիր մի կե-
նար ։ Ու Յովնաթանին մանչը
նետերը ժողվեց , իր տիրոջը եկաւ ։
39 Բայց մանչը բան մը չէր գիտեր . աս
բանը միայն Յովնաթանը ու Դաւի-
40 թը գիտէին ։ Եւ Յովնաթան իր
գործիքները իր մանչուն տուաւ ,
ու անոր ըսաւ . Գնա՛ քաղաքը
41 տար ։ Եւ մանչը գացածին պէս՝
Դաւիթ հարաւային կողմէն ելաւ ,
ու երեսի վրայ գետինը ինկաւ , ու
իրեք անգամ երկրպագութիւն ը-
րաւ . և մէկզմէկ համբուրեցին , ու
իրարու վրայ լացին , մինչև որ Դա-
42 ւիթը չափէ դուրս լացաւ ։ Եւ
Յովնաթան Դաւիթին ըսաւ .
Գնա խաղաղութեամբ , ինչպէս
որ երկուքնիս ալ Տէրոջը անուն-
վը երդում ըրինք ու ըսինք . Տէրը
իմ ու քու մէջդ , ու իմ սերունդիս
ու քու սերունդիդ մէջը վկայ ըլ-
43 լայ մինչև յաւիտեան ։ Եւ Դաւիթ
ելաւ գնաց . Յովնաթանն ալ քա-
ղաքը մտաւ ։

Գլ. ԻԱ

1 Դաւիթ Նոբ գալով՝ Աքիմելեքէն առաջաւո-
րութեան հացը կ'առնէ . 7 Դովէկ հոն ներկայ
կը գտնուի . 8 Դաւիթ Գողիաթին սուրը
կ'առնէ . 10 Գեթի մէջ զինքը խենթ ձեւացնելով կը
ձեւացնէ ։

1 Ու Դաւիթ Նոբ գնաց Աքիմելէք
քահանային . և Աքիմելէք զար-
հուրելով Դաւիթը դիմաւորեց , ու
անոր ըսաւ . Ինչո՞ւ համար մինակ
2 ես , ու հետդ մարդ չկայ ։ Եւ
Դաւիթ Աքիմելէք քահանային ը-
սաւ . Թագաւորը ինծի բան մը
հրամայեց , ու ինծի ըսաւ . Մարդ
մը չգիտնայ ան բանը՝ որուն համար
որ քեզ կը խրկեմ , ու ինչ որ քե-
զի հրամայեցի . ու ես մանչերուն
3 մէկ մէկ տեղ որոշեր եմ ։ Հիմա
ի՞նչ կայ ձեռքիդ տակը՝ ինծի
հինգ հա՛ց տուր , կամ ինչ որ կը
4 գտնուի ։ Եւ քահանան Դաւիթին
պատասխան տուաւ ու ըսաւ .
Ձեռքիս տակը հասարակ հաց չը-
կայ . միայն սուրբ հաց կայ . թէ
որ մանչերը գոնէ կիներէ զգու-
5 շացած են՝ թող ուտեն ։ Եւ Դա-
ւիթ՝ քահանային պատասխան
տուաւ՝ ու անոր ըսաւ . Իրաւցընէ
կիները մեզմէ հեռու են իմ ճամ-
բայ ելած օրէս , երէկուընէ
ու մէկալ օրուընէ . և մանչերուն

Margin references: Ղև. է. 21 ; ժե. 5. ; Հմր 6 ; Եբր. որդի ; Գլ. ժթ. 5 ; Տես Մատ. իէ. 23 ; Ղու. իգ. 22 ; Գլ. ժը. 11 ; Հմր 7 ; Գլ. ա. 17 ; Հմր 23 ; Գլ. ժգ. 3 ; Մար. բ. 26 ; Գլ. ժզ. 4 ; Ել. իթ. 30 ; Ղև. իգ. 5 ; Մատ. ժբ. 4 ; Ել. ժթ. 15 ; Զաք. է. 3 ; Ա Թես. դ. 4

Ն․ Ք․ ԳՔ․ Իբր 1062

* Եբր․ կերպով մը հասարակ է ,
ղ Ղև․ ը․ 26 ։
է Մատ․ ժբ․ 3 , 4 ։ Մար․ բ․ 25 , 26 ։ Ղու․ զ․ 3 , 4 ։
ը Ղև․ իդ․ 8 , 9 ։
Ր Գլ․ իբ․ 9 ։ Սաղ․ ծբ․ ին վերնագիրը ։

ամանները մաքուր են․ և աս ալ
*հասարակ հաց կրնայ սեպուիլ ,
մանաւանդ որ այսօր ղամաններուն
մէջը ուրիշ հաց կը սրբագործուի ։
6 Ուստի քահանան էսուրբ հացը
տուաւ անոր․ քանզի հոն ուրիշ
հաց չկար , բայց միայն առաջաւո-
րութեան հացը , ըոր Տէրոջը առ-
ջեւէն կը վերցուէր , ու վերցուած
7 օրը տաք հաց կը դրուէր ։ Եւ ան
օրը Սաւուղին ծառաներէն մէկը՝
հոն Տէրոջը առջեւը արգիլուած էր ,
ու անոր անունը Եդովմայեցի Րդո-
վէկ էր․ անիկայ Սաւուղին հովիւ-
8 ներուն գլուխն էր ։ Եւ Դաւիթ
Աքիմելէքին ըսաւ․ Աս տեղս քու
ձեռքիդ տակը նիզակ մը կամ սուր
մը չկա՞յ․ քանզի թագաւորին գոր-
ծը ստիպողական ըլլալուն համար՝
իմ սուրս ու զէնքերս հետս չառի ։
9 Եւ քահանան ըսաւ․ Ահա Փղշտա-
ցի Գողիաթին սուրը՝ որ զանիկայ
ծԷլայի հովիտին մէջը մեռցուցիր ,
էանիկայ եփուտին ետեւը լաթի մը
մէջ փաթթուած կը կենայ․ թէ
որ կ'ուզես զանիկայ առնել , ա՛ռ․
քանզի հոս անկէ ուրիշ չկայ․ ու
Դաւիթ ըսաւ․ Անոր նմանը չկայ․
զանիկայ ինծի տուր ։
10 Եւ ան օրը Դաւիթ ելաւ , ու
Սաւուղին երեսէն փախաւ , և ւԳե-
թի Անքուս թագաւորին գնաց ։
11 Ու խԱնքուսին ծառաները անոր ը-
սին․ Երկրին թագաւորը՝ Դաւի-
թը ասիկայ չէ՞․ ասոր համար չէ՞ր
որ պար բռնողները պատասխան
տալով կ'երգէին ու կ'ըսէին․
ծՍաւուղ իր հազարաւորները
զարկաւ , ու Դաւիթ իր բիւրաւոր-
ները ։
12 Եւ Դաւիթ կաս խօսքերը իր սրտին
մէջը դրաւ , ու Գեթի թագաւորին
Անքուսին երեսէն շատ վախցաւ ։
13 Եւ հանոնց առջեւը իր դէմքը փո-
խելով՝ անոնց ձեռքին տակը զինքը
խենդ ձեւացուց․ դռներու փեղկե-
րուն վրայ նշաններ կը գծէր , ու
լորձունքները մօրուքին վրայ կը
14 վազցրնէր ։ Եւ Անքուս իր ծառա-
ներուն ըսաւ․ Ահա աս մարդուն
խենդ ըլլալը տեսաք․ զանիկայ
15 ինչո՞ւ համար ինծի բերիք ։ Միթէ
ես խենդերու կարօ՞տ եմ , որ ասի-
կայ իմ առջեւս բերիք խենդու-
թիւն ընելու համար․ ասիկայ իմ
տո՞ւնս մտնէ ։

ծ Գլ․ ժէ․ 2 , 50
է Տես գլ․ լ․ 10 ։
ւ Սաղ․ լդ․ ին վերնագիրը ։
խ Սաղ․ ծզ․ ին վերնագիրը ։
ծ Գլ․ ժը․ 7 ։ իթ․ 5 ։
կ Ղու․ բ․ 19 ։
հ Սաղ․ լդ․ ին վերնագիրը ։

ԳԼ․ ԻԲ

1 Դաւիթին քովը մարդիկներ կը ժողվուին Ոդողոմի մէջ ։ 3 Դաւիթ Մասփայի մէջ իր ծնողքը Մովաբի թագաւորին կը յանձնէ․ 5 Գադ մարգարէին խրատովը Հարէթ կու գայ ։ 6 Սաւուղ Դաւիթին ետեւէն իյնալով՝ իր ծառաներուն անհաւատարմութեանը համար կը գանգատի ։ 9 Դովէկ ամբաստանութիւն կ'ընէ Աքիմելէքին վրայով ։ 11 Սաւուղ կը հրամայէ որ քահանաները սպաննեն ։ 17 Թիկնապահ զօրքը աս հրամանը կատարել չուզելով , Դովէկ 'ի գործ կը դնէ զանիկայ ։ 20 Աբիաթար փախչելով՝ Դաւիթին կը բերէ ան գէշ լուրը ։

1 Եւ Դաւիթ անկէ գնաց , ու ողջ
առողջ ՟Ոդողոմի քարայրը
բհասաւ․ ու իր եղբայրները և իր
հօրը բոլոր տունը լսեցին , ու հոն
2 անոր իջան ։ գԵւ բոլոր նեղու-
թեան մէջ եղող՝ պարտք ունեցող
ու †սիրտը վիրաւորուած" մարդիկ-
ները անոր քովը ժողվուեցան․ և
անիկայ անոնց վրայ զօրագլուխ
եղաւ․ ու անոր քովը չորս հա-
րիւրի չափ մարդ եղան ։
3 Եւ Դաւիթ անկէ Մովաբի Մասփան գնաց , ու Մովաբի թագաւո-
րին ըսաւ․ Կ'աղաչեմ , իմ հայրս
ու մայրս ձեր քովը ‡կենան , մինչև
որ գիտնամ՝ թէ Աստուած ինծի
4 ինչ պիտի ընէ ։ Ու զանոնք Մո-
վաբի թագաւորին առջեւը բերել
տուաւ․ և անոնք անոր քովը բը-
նակեցան , որչափ ժամանակ որ
Դաւիթ բերդին մէջը կեցաւ ։
5 Եւ դԳադ մարգարէն Դաւիթին
ըսաւ․ Բերդին մէջը մի՛ նստիր․
ելի՛ր Յուդայի երկիրը գնա ։ Ու
Դաւիթ գնաց Հարեթի անտառը
մտաւ ։
6 Եւ Սաւուղ լսեց որ Դաւիթ ու
անոր հետ եղող մարդիկները գըտ-
նուեր են․ ու Սաւուղ Գաբաայի
մէջ Ռամայի ‖ծառին տակը նստեր
էր , ու նիզակը իր ձեռքն էր , և իր
ամէն ծառաներն ալ իր բոլորտիքը
7 կայներ էին ։ Ու Սաւուղ իր քովը
կայնող ծառաներուն ըսաւ․ Ո՛վ
որդիք Բենիամինի՝ մտիկ ըրէք․
Միթէ Յեսսէի որդին եամէնքնուդ
ալ արտեր ու այգինե՞ր պիտի տայ
ամէնքնիդ ալ հազարապետներ ու
8 հարիւրապետնե՞ր պիտի ընէ , Որ
ամէնքդ ինծի դէմ միաբաներ էք
ու ղՅեսսէի որդւոյն իմ որդւոյս
հետ ըրած դաշնակցութիւնը էիմ
ականջիս ըսող մը չկայ․ և ձեր մէջը
մարդ մը չկայ՝ որ ինծի համար ցաւի , ու ինծի յայտնէ․ քանզի իմ
որդիս՝ իմ ծառաս ինծի դէմ ոտք
հանեց , որ դարանամուտ ըլլայ ,
ինչպէս որ հիմա այսօր կը տեսնէք ։
9 Եւ Սաւուղին ծառաներուն վե-
րակացուն ըԵդովմայեցի Դովէկը
պատասխան տուաւ , ու ըսաւ․
Յեսսէի որդին տեսայ , որ Նոբ
եկաւ ՐԱքիտովբի որդւոյն ծԱքի-
10 մելէքին․ էՈւ անիկայ՝ անոր հա-
մար Տէրոջը հարցուց , ու ւանոր
պաշար տուաւ , և անոր Փղշտացի
Գողիաթին սուրը տուաւ ։

Ն․ Ք․ ԳՔ․ Իբր 1062

՟ Բ Թագ․ իգ․ 13 ։
բ Սաղ․ ծէ․ ին և ճիբ․ ին վերնագիրները ։
գ Դատ․ ժա․ 3 ։
† Եբր․ դառնահոգի
‡ Եբր․ ելլեն ,
դ Բ Թագ․ իդ․ 11 ։ Ա Մն․ իա․ 9 ։ Բ Մն․ իթ 25 ։
‖ Կամ՝ մաշայրն
ե Գլ․ ը․ 14 ։
զ Գլ․ ժը․ 3 ։ ի․ 30 ։
է Գլ․ ի 2 ։
ը Գլ․ իա 7 ։ Սաղ․ ծբ․ ին վերնագիրը և 1 , 2 , 3 համարները ։
Ր Գլ․ ժդ․ 3 ։
ծ Գլ իա․ 1 ։
է Թու․ իէ․ 21 ։
ւ Գլ․ իա․ 6 , 9 ։

Ն. Ք. Գ. Ք. իբր 1062

11 Ան ատենը թագաւորը մարդ
ղրկեց, ու Աքիտովբի որդին Ա-
քիմելէք քահանան, ու անոր հօրը
բոլոր տունը՝ Նոբի մէջ եղող քա-
հանաները կանչեց. ու ամէնքն ալ
12 թագաւորին եկան։ Եւ Սաւուղ
ըսաւ. Ո՛վ որդի Աքիտովբայ՝
մտիկ ըրէ. ու անիկայ ըսաւ.
13 Ահա՛ հոս եմ՝ տէր իմ։ Եւ Սաւուղ
անոր ըսաւ, ինչո՞ւ համար դուն ու
Յեսսէի որդին ինծի դէմ միաբանե-
ցաք, ու դուն անոր հաց ու սուր
տուիր, և անոր համար Աստուծոյ
հարցուցիր, որ անիկայ ելլէ ինծի
դարանամուտ ըլլայ, ինչպէս որ
14 այսօր կ'երեւնայ։ Եւ Աքիմելէք
պատասխան տուաւ թագաւորին՝
ու ըսաւ. Քու բոլոր ծառաներուդ
մէջը ո՞վ հաւատարիմ է Դաւիթին
պէս, որ թագաւորի փեսայ, քու
* Կամ՝ ամենանդ մտնող, ելլող՝ հրամաններովդ գացող։
*ատեանիդ վերակացուն", ու քու
15 տանդ մէջ պատուաւոր է։ Միթէ
այսօ՞ր սկսայ անոր համար Աստու-
ծոյ հարցընելու. քա՛ւ լիցի. թա-
գաւորը իր ծառային վրայ, ոչ իմ
հօրս բոլոր տանը վրայ թող բան
մը չդնէ. քանզի քու ծառադ աս
բոլոր բաներէն՝ պզտիկ կամ մեծ
16 բան մը չէր գիտեր։ Եւ թա-
գաւորը ըսաւ. Ո՛վ Աքիմելէք՝ ան-
պատճառ պիտի մեռնիս, թէ
դուն և թէ քու հօրդ բոլոր տունը։
17 Ու թագաւորը իր քովը կայնող
սուրհանդակներուն ըսաւ. Դար-
ձէ՛ք՝ Տէրոջը քահանաները մեռ-
ցուցէ՛ք. քանզի անոնց ձեռքն ալ
Դաւիթին հետն է. որովհետեւ ա-
նոր փախչիլը գիտնալով՝ ինծի
չյայտնեցին. բայց թագաւորին
Ի Տես Եւ. ա. 17։
ծառաները Ի չուզեցին իրենց ձեռ-
քը երկնցընել՝ Տէրոջը քահանա-
18 ները զարնելու։ Եւ թագաւորը
Դովեկին ըսաւ. Դո՛ւն դարձիր,
ու քահանաները զարկ։ Ու Ե-
դովմայեցի Դովեկը դարձաւ, և
Ժ Տես Գլ. բ. 31։
քահանաները զարկաւ, ու Ժ ան օրը
անիկայ ութսունըհինգ մարդ մեռ-
ցուց, որ քթանէ եփուտ կը հագ-
Լ Հմր 9, 11։
19 նէին։ Լ Եւ քահանաներուն Նոբ
քաղաքը սուրի բերնէ անցուց.
էրիկ մարդէն մինչև կնիկ մարդը,
տղայէն մինչև կաթնկեր մանուկը,
ու մինչև արջառը, էշը ու ոչխարը
սուրի բերնէ անցուց։
Հ Գլ. իգ. 6։
20 Հ Եւ Աքիտովբեան Աքիմելէքին
մէկ որդին՝ որուն անունը Աբիա-
Ձ Գլ. բ. 33։
թար էր, ազատեցաւ, ու Ձ փախաւ
21 Դաւիթին ետեւէն գնաց։ Եւ Ա-
բիաթար Դաւիթին պատմեց՝ թէ
Սաւուղ Տէրոջը քահանաները մեռ-
22 ցուց։ Եւ Դաւիթ Աբիաթարին
ըսաւ. Ես ան օրը գիտէի որ Ե-
դովմայեցի Դովեկը հոն գտնուե-
լով՝ անշուշտ Սաւուղին պիտի
պատմէ. քու հօրդ տանը բոլոր
մարդիկներուն մահուանը ես պատ-
23 ճառ եղայ։ Իմ քովս նստէ, մի՛
Ղ Գ Թագ. բ. 26։
վախնար. Ղ Քանզի իմ հոգիս փնտռ-
ռողը՝ քու հոգիդ ալ կը փնտռէ.
բայց դուն իմ քովս ապահով ես։

ԳԼ. ԻԳ

1 Դաւիթ Աբիաթարին միջոցովը Տէրոջը հար-
ցընելէն ետեւ՝ Կէիլան կ'ազատէ։ 7 Աստուած
Դաւիթին կը յայտնէ Սաւուղին գալը, ու
Կէիլացւոց անհաւատարմութիւնը. ան ալ
Կէիլայէն կը փախչի։ 14 Զիփի մէջ Յովնա-
թան կու գայ՝ ու Դաւիթը կը մխիթարէ։
19 Զիփացիք Սաւուղին կը յայտնեն Դաւի-
թին ո՛ւր ըլլալը. 25 ու անիկայ Մաոնի մէջ
Սաւուղէն կ'ազատի՝ Փղշտացւոց յարձակմա-
նը պատճառաւ։

1 Եւ Դաւիթին իմացուցին, ըսե-
Ա Յես. ժե. 44։
լով. Ահա՛ Փղշտացիք Ա Կէիլա-
յի հետ պատերազմ կ'ընեն, ու կա-
2 լերը կը կողոպտեն։ Եւ Դաւիթ
Բ Հմր 4, 6, 9։ Գլ. Լ. 8։ Բ Թագ. Ե. 19, 23։
Բ Տէրոջը հարցուց՝ ու ըսաւ. Եր-
թամ աս Փղշտացիները զարնե՞մ։
Եւ Տէրը Դաւիթին ըսաւ. Գնա՛
Փղշտացիները զա՛րկ, ու Կէիլան
3 ազատէ։ Եւ Դաւիթին մարդիկ-
ները անոր ըսին. Ահա՛ մենք հոս
Յուդայի մէջ կը վախնանք. ալ
ո՞րչափ աւելի՝ թէ որ Կէիլա եր-
թանք Փղշտացւոց գունդերուն
4 դէմ։ Ու Դաւիթ նորէն մէյմըն
ալ Տէրոջը հարցուց. և Տէրը անոր
պատասխան տուաւ ու ըսաւ. Ե-
լի՛ր՝ Կէիլա՛ իջիր. քանզի ես Փղշ-
տացիները քու ձեռքդ կու տամ։
5 Եւ Դաւիթ իր մարդիկներովը Կէի-
լա գնաց, ու Փղշտացւոց հետ պա-
տերազմ ըրաւ. ու անոնց անա-
սունները առաւ, և զանոնք մեծ
հարուածով մը զարկաւ. ու Դա-
ւիթ Կէիլային բնակիչները ազա-
6 տեց։ Եւ Աքիմելէքին որդին Ա-
բիաթարը Դաւիթին քովը Կէիլա
Գ Գլ. իբ. 20։
Գ փախած ատենը՝ եփուտը ձեռքը
բռնած իջաւ։
իբր 1061
7 Ու երբոր Սաւուղին իմացուցին,
թէ Դաւիթ Կէիլա մտեր է, Սա-
ւուղ ըսաւ. Աստուած իմ ձեռքս
մատներ է զանիկայ. քանզի դռներ
ու նիգեր ունեցող քաղաքի մը մէջ
8 մտեր գոցուեր է։ Եւ Սաւուղ բո-
լոր ժողովուրդը պատերազմի կան-
չեց, որ Կէիլա իջնէ, ու Դաւիթը
9 և անոր մարդիկները պաշարէ։ Իսկ
Դաւիթ իմացաւ որ Սաւուղ իրեն
համար գաղտուկ չարութիւն մը կը
Դ Թուոց. իէ. 21։ Գլ. Լ. 7։
հնարէ, ու Դ Աբիաթար քահանա-
յին ըսաւ. Եփուտը մօտեցո՛ւր։
10 Եւ Դաւիթ ըսաւ. Ո՛վ Տէր Աս-
տուած Իսրայէլի՛ քու ծառադ ըս-
տոյգ լսեց որ Սաւուղ Կէիլայի վրայ
Ե Գլ. իբ. 19։
գալ կ'ուզէ, Ե որ քաղաքը իմ պատ-
11 ճառովս աւրէ. Արդեօք Կէիլայի

Ն․ Ք․ Գ․ Ք․ Իրր 1061

բնակիչները զիս անոր ձեռքը պիտի
մատնե՞ն, ու ծառայիդ լսածին
պէս՝ Սաւուղը հո՞ս պիտի իջնէ․
ո՛վ Տէր Աստուած Իսրայէլի, կ'ա-
ղաչեմ՝ ծառայիդ յայտնէ։ Եւ
12 Տէրը ըսաւ․ Պիտի իջնէ։ Ու
Դաւիթ ըսաւ․ Կէիլայի բնակիչ-
ները՝ զիս ու իմ մարդիկներս Սա-
ւուղին ձեռքը պիտի մատնե՞ն։ Եւ
13 Տէրը ըսաւ․ Պիտի մատնեն։ Ուս-
տի Դաւիթ ու անոր մարդիկները՝
Զ վեց հարիւր մարդու չափ ելան՝
Կէիլայէն գացին, և ուր որ կրնա-
յին երթալ՝ կ'երթային․ ու երբոր
Դաւիթին Կէիլայէն ելլելը Սաւու-
ղին իմացուցին, նա երթալէն ետ
կեցաւ։
14 Եւ Դաւիթ անապատին մէջ ա-
մուր տեղուանք կը նստէր․ ու
Է Զիփի անապատին մէջ՝ Ը լեռան
մը վրայ նստաւ։ Եւ Սաւուղ Թ ա-
մէն օր զանիկայ կը փնտռէր․ բայց
Աստուած անոր ձեռքը չմատնեց
15 զանիկայ։ Ու Դաւիթ տեսաւ որ
Սաւուղ իր անձը փնտռելու ելեր
է․ և Դաւիթ Զիփի անապատը՝
անտառի մը մէջ էր։
16 Ու Սաւուղին որդին Յովնաթա-
նը ելաւ՝ անտառը գնաց Դաւի-
թին, ու անոր ձեռքը Աստուծով
17 զօրացուց․ Եւ անոր ըսաւ․ Մի՛
վախնար․ քանզի իմ հօրս Սաւու-
ղին ձեռքը քեզ պիտի չգտնէ, ու
դուն Իսրայէլի վրայ թագաւոր պի-
տի ըլլաս, ու ես քու երկրորդդ
պիտի ըլլամ․ և Ժ աս բանը իմ
18 հայրս Սաւուղն ալ գիտէ։ Ու
ԺԱ երկուքնին Տէրոջը առջևը ուխտ
ըրին․ և Դաւիթ անտառին մէջը
մնաց, բայց Յովնաթան իր տունը
դարձաւ։
19 Ու ԺԲ Զիփացիք՝ Գաբաա ելան
Սաւուղին, ու ըսին․ Ահա Դաւիթ
մեր քովը՝ ամուր տեղուանքը ան-
տառին մէջ՝ Եքեղա բլուրին վրայ՝
Եսիմոնի հարաւային կողմը պա-
20 հուած է։ Հիմա ո՛վ թագաւոր,
ինչպէս որ քու անձդ իջնելու կը
փափաքի, իջի՛ր, ու ԺԳ զանիկայ
թագաւորին ձեռքը մատնելը մեզի
21 մնայ։ Ու Սաւուղ ըսաւ․ Դուք
Տէրոջմէն օրհնեալ ըլլաք, որ ինծի
22 ցաւակից եղաք։ Ուրեմն գացէ՛ք,
ու աւելի աղէկ գիտցէ՛ք, և անոր
ոտքին կոխած տեղը դիտցէք ու տե-
սէ՛ք, ու թէ ո՛վ զանիկայ հոն տեսեր
է․ քանզի ինծի ըսած են թէ՝ անի-
23 կայ շա՛տ խորամանկ է։ Ուստի
նայեցէք, ու անոր բոլոր պահուե-
լու տեղուանքը իմացէ՛ք և [illegible]-
ստուգելով ինծի դարձէք, և ձեզի
հետ երթամ․ ու թէ որ անիկայ ան
երկրին մէջն է՝ զանիկայ Յուդայի

Զ Գլ․ ԻԲ․ 2; ԻԵ․ 13։
Է Յես․ ԺԵ․ 55։
Ը Սաղ․ ԺԱ․ 1։
Թ Սաղ․ ԾԴ․ 3, 4։
Ժ Գլ․ ԻԴ․ 20։
ԺԱ Գլ․ ԺԸ․ 3; Ի․ 16, 42; Բ Թագ․ ԻԱ․ 7։
ԺԲ Տես Գլ․ ԻԶ․ 1; Սաղ․ ԾԴ․ ին վերնագիրը։
ԺԳ Սաղ․ ԾԴ․ 3։

բոլոր հազարաւորներուն մէջը աղէկ
24 մը պիտի փնտռեմ։ Ու անոնք ե-
լան, և Սաւուղին առջևէն Զիփ
գացին․ ու Դաւիթ իր մարդիկնե-
րովը ԺԴ Մաոնի անապատը դաշտին
մէջ՝ Եսիմոնի հարաւային կողմը
25 նստեր էր։ Եւ Սաւուղ իր մար-
դիկներովը զանիկայ փնտռելու գը-
նաց․ ու երբոր Դաւիթին իմա-
ցուցին, վէմը իջաւ, և Մաոնի ա-
նապատին մէջ նստաւ․ ու Սաւուղ
լսեց, ու Դաւիթին ետևէն Մաոնի
26 անապատը վազեց։ Եւ Սաւուղ
լեռանը աս կողմէն կ'երթար, Դա-
ւիթն ալ իր մարդիկներովը լեռա-
նը մէկալ կողմէն կ'երթար․ ԺԵ Ու
Դաւիթ կը փութար որ Սաւուղին
երեսէն փախչի․ բայց Սաւուղ ու
իր մարդիկները՝ ԺԶ Դաւիթին ու
անոր մարդիկներուն չորս կողմը
պատեցին, որ զանոնք բռնեն։
27 ԺԷ Եւ լրաբեր մը եկաւ Սաւուղին, ու
ըսաւ․ Շուտով եկուր․ քանզի
28 Փղշտացիք երկիրը կոխեցին։ Ուս-
տի Սաւուղ Դաւիթը հալածելէն
դարձաւ գնաց, որ Փղշտացւոց
դէմ ելնէ․ անոր համար ան տեղին
անունը *Սէլա մահլէքօթ ըսուե-
ցաւ։

## ԳԼ․ ԻԴ

1 Դաւիթ Ենգադդիի այրի մը մէջ՝ Սաւուղին քղանցքը կտրելով, անոր կենացը կը խնայէ․ 9 և այսպէս իր անմեղութիւնը կը ցուցընէ։ 17 Սաւուղ իր յանցանքը խոստովանելով Դաւիթին երդում ընել կու տայ, ու կը մեկնի։

1 Եւ Դաւիթ անկէ ելաւ, ու ԺԸ Են-
գադդիի ամուր տեղուանքը նըս-
2 տաւ։ Ու ԺԹ երբոր Սաւուղ Փղշտա-
ցիներէն ետ դարձաւ, անոր իմա-
ցուցին ու ըսին․ Ահա Դաւիթ
Ենգադդիի անապատին մէջն է։
3 Եւ Սաւուղ բոլոր Իսրայէլէն իրեք
հազար ընտրուած մարդիկներ ա-
ռաւ, ու Ի գնաց որ Դաւիթը ու
անոր մարդիկները փնտռէ այծե-
4 մանց ժայռերուն վրայ։ Եւ ճամ-
բուն վրայ եղող ոչխարներուն փա-
րախները եկաւ, ու հոն մէկ քար-
այր մը կար․ ու ԻԱ Սաւուղ †հար-
կաւորութեան համար ներս մտաւ․
և ԻԲ Դաւիթ իր մարդիկներովը քար-
5 այրին ներսի դին նստեր էր։ ԻԳ Ու
Դաւիթին մարդիկները անոր ըսին․
Ահա Տէրոջը քեզի ըսած օրը ասի-
կայ է՝ թէ Քու թշնամիդ քու
ձեռքդ պիտի մատնեմ, և քու
աչքերուդ հաճոյ երևցածը ըրէ ա-
նոր։ Ու Դաւիթ ելաւ, և Սաւու-
ղին վերարկուին ծայրը գաղտուկ
6 կտրեց։ Բայց անկէ ետքը ԻԴ Դաւի-
թին սիրտը խղճաց, Սաւուղին
վերարկուին ծայրը կտրելուն վրայ։
7 Ու իր մարդիկներուն ըսաւ․ ԻԵ Աս-

Ն․ Ք․ Գ․ Ք․ Իրր 1061
ԺԴ Յես․ ԺԵ․ 55; Գլ․ ԻԵ․ 2։
ԺԵ Սաղ․ ԼԱ․ 22։
ԺԶ Սաղ․ ԺԷ․ 9։
ԺԷ Տես Դ Թագ․ ԺԹ․ 9։
* Այս՝ վէմ բաժանմանց։
ԺԸ Բ Մն․ Ի․ 2։
ԺԹ Գլ․ ԻԳ․ 28։
Ի Սաղ․ ԼԸ․ 12։
ԻԱ Սաղ․ ՃԽԲ․ 6։
† Եբր․ ոտքերը ծածկելու․ Դատ․ Գ․ 24։
ԻԲ Սաղ․ ԾԷ․ ին և ՃԽԲ ին վերնագիրները։
ԻԳ Գլ․ ԻԶ․ 8։
ԻԴ Բ Թագ․ ԻԴ․ 10։
ԻԵ Գլ․ ԻԶ․ 11։

տուած չընէ որ Տէրոջը օծեալին՝
իմ տիրոջս աս բանը ընեմ, ձեռքս
անոր վրայ երկընցընելով. քանզի
8 անիկայ Տէրոջը օծեալն է։ Եւ
Դաւիթ աս խօսքերով իր մար-
դիկները զսպեց, ու զանոնք չթո-
ղուց, որ Սաւուղին վրայ յարձա-
կին։ Եւ Սաւուղ քարայրէն դուրս
ելաւ, ու իր ճամբան գնաց։
9 Անկէ ետև Դաւիթն ալ քարայ-
րէն դուրս ելաւ, ու Սաւուղին ե-
տևէն կանչելով ըսաւ. Ով տէր
իմ թագաւոր։ Ու երբոր Սա-
ւուղ ետին նայեցաւ, Դաւիթ ե-
րեսը գետինը ծռելով՝ երկրպագու-
10 թիւն ըրաւ։ Եւ Դաւիթ ըսաւ
Սաւուղին. Ինչո՞ւ համար մարդոց
խօսքը մտիկ կ'ընես, որ գէշ կ'ըսեն
թէ՝ Ահա Դաւիթ քեզի չարու-
11 թիւն ընել կը ջանայ։ Ահա այսօր
քու աչքերդ կը տեսնեն, որ Տէրը
այսօր քարայրին մէջը քեզ իմ
ձեռքս մատնեց. ու ըսին որ քեզ
մեռցընեմ. բայց ես քեզի խնայե-
ցի, ու ըսի. Ես իմ ձեռքս իմ
տիրոջս չեմ երկընցըներ. քանզի
12 անիկայ Տէրոջը օծեալն է։ Ու տես
հա՛յր իմ՝ տես, քու վերարկուիդ
ծայրը իմ ձեռքիս մէջն է. ու ես
քու վերարկուիդ ծայրը կտրելով՝
քեզ չմեռցուցի Հասկցիր
ու տես, որ իմ ձեռքիս մէջը չա-
րութիւն ու անօրէնութիւն չկայ,
ու քեզի յանցանք մը չեմ ըրած.
բայց դուն * զիս մեռցընելու կ'աշ-
13 խատիս"։ Տէրը դատաստան ընէ
իմ ու քու մէջդ, ու Տէրը իմ վրէժս
քեզմէ առնէ. բայց իմ ձեռքս քու
14 վրադ չըլլայ։ Ինչպէս որ հին ա-
ռակը կ'ըսէ. Անօրէններէն անօրէ-
նութիւն կ'ելլէ. բայց իմ ձեռքս
15 քու վրադ չըլլայ։ Իսրայէլի թա-
գաւորը որո՞ւն ետևէն ելեր է,
և դուն որո՞ւն ետևէն ինչեր կը
հալածես. մեռած շան մը ետևէ,
16 լուի մը ետևէ ելեր։ Ուստի
Տէրը դատաւոր ըլլայ, և իմ ու
քու մէջդ դատաստան ընէ. և
տեսնէ ու պաշտպանէ զիս, և
քու ձեռքէդ ազատէ։
17 Ու երբոր Դաւիթ աս խօսքերը
Սաւուղին խօսիլը լմնցուց, Սա-
ւուղ ըսաւ. Որդեա՛կ իմ Դաւիթ,
ատիկայ քու ձա՞յնդ է. և Սաւուղ
18 իր ձայնը վերցուց, ու լացաւ. Ու
Դաւիթին ըսաւ. Դուն ինծմէ
արդար ես. քանզի դուն ինծի բա-
րիք հատուցիր, բայց ես քեզի չա-
19 րիք հատուցի։ Ու դուն այսօր քու
ինծի ըրած աղէկութիւնդ յայտնե-
ցիր. որովհետև Տէրը զիս քու ձեռ-
քըդ մատնեց, ու դուն զիս չմեռ-
20 ցուցիր։ Վասն զի մէկ մարդ մը իր

Ն. Ք. ԳՌ. իր 1061

Բ Սաղ. է. 4։ Մատ. ե. 44։ Հռով. ժբ. 17, 19։

Ժ Սաղ. ճխա. 6։ Առակ. ժզ. 28։ ժէ. 9։

Ի Սաղ. է. 3։ լե. 7։

* Եբր. իմ անձս կ'որսաս զանիկայ առնելու։ Գլ. իզ. 20։

Լ Ծն. ժզ. 5։ Դատ. ժա. 27։ Գլ. իզ. 10։ Յոբ. ե. 8։

Է Գլ. ժէ. 43։ բԹագ. թ. 8։

Ը Գլ. իզ. 20։

Հ Հմր 13։

Հր Մն. իդ. 22։

Յ Սաղ. լե. 1։ խգ. 1։ ճժթ. 154։ Միք. է. 9։

Գլ. իզ. 17։

Գլ. իզ. 21։

Ծն. լը. 26։

Մատ. ե. 44։

Գլ. իզ. 23։

Գլ. իգ. 12։ իզ. 8։

թշնամին գտնելու ըլլայ, զանիկայ
թող կու տա՞յ որ խաղաղութեամբ
երթայ. ուստի այսօր քու ինծի ը-
րածիդ փոխարէն՝ Տէրը քեզի բա-
21 րիք հատուցանէ։ Եւ հիմա գի-
տեմ որ դուն անշուշտ թագաւոր
պիտի ըլլաս. ու Իսրայէլին թա-
գաւորութիւնը քու ձեռքիդ մէջը
22 պիտի հաստատուի։ Ու հիմա Տէ-
րոջմով ինծի երդում ըրէ՝ թէ
ինծմէ ետքը իմ սերունդս պիտի
չմեռցընես, ու իմ հօրս տունէն
իմ անունս բնաջինջ պիտի չընես։
23 Եւ Դաւիթ Սաւուղին երդում ը-
րաւ։ Ետքը Սաւուղ իր տունը
գնաց. ու Դաւիթ իր մարդիկնե-
րովը ամուր տեղը ելաւ։

Ն. Ք. ԳՌ. իր 1061

Գլ. իգ. 17։

Ծն. իա. 23։

Բ Թագ. իա. 6, 8։

Գլ. իդ. 1։

## ԳԼ. ԻԵ

1 Սամուէլ կը մեռնի։ 2 Դաւիթ Նաբաղին մարդ կը խրկէ. 10 և Նաբաղին ժանտութեանը համար սրդողելով՝ միտք կ'ընէ որ զանիկայ բնաջինջ ընէ։ 14 Աբիգեա աս բանը իմանալով՝ 18 ընծայ մը կը պատրաստէ. 23 և իր իմաստութեամբը՝ 32 Դաւիթին սիրտը կը հանդարտեցընէ։ 36 Նաբաղն ալ աս բաները լսելով կը սարսափի, ու ետքը կը մեռնի։ 39 Դաւիթ իրեն կնիկ կ'առնէ Աբիգեան ու Աքինոամը։ 44 Մեղքողը Փաղտիելին կը տրուի։

1 Եւ Սամուէլ մեռաւ. ու բոլոր
Իսրայէլը ժողվուեցան, ու ա-
նոր համար սուգ ըրին. ու զանի-
կայ Ռամայի մէջ իր տունը թաղե-
ցին։ Եւ Դաւիթ ելաւ Փառա-
նի անապատը իջաւ։
2 Եւ Մաոնի մէջ մարդ մը կար,
ու անոր գործը Կարմեղոսի մէջ
էր. և անիկայ խիստ մեծ մարդ էր,
ու իրեք հազար ոչխար՝ և հազար
այծ ունէր. ու իր ոչխարները աս-
րակտուր ընելու համար Կարմե-
3 ղոսի մէջ կը գտնուէր։ Եւ ան
մարդուն անունը Նաբաղ էր, ու
անոր կնկանը անունը Աբիգեա. և
կնիկը խոհեմամիտ ու գեղեցկադէմ
էր. բայց էրիկը խստաբարոյ ու
չարագործ էր. ու անիկայ Քա-
ղեբեան էր։
4 Եւ Դաւիթ անապատին մէջ լը-
սեց որ Նաբաղ իր ոչխարները աս-
5 րակտուր կ'ընէ։ Ու Դաւիթ տա-
սը մանչ խրկեց, և Դաւիթ ման-
չերուն ըսաւ. Կարմեղոս ելէք, ու
Նաբաղին գացէք, և իմ անունովս
անոր ողջութիւնը հարցուցէք.
6 Ու անոր այսպէս ըսէք. Ողջ կե-
ցիր. քեզի և քու տանդ ու քու բո-
լոր ստացուածքիդ խաղաղութիւն
7 ըլլայ։ Եւ հիմա լսեցի որ ոչխար-
ներդ ասրակտուր կ'ընես. քու հո-
վիւներդ մեր հետ էին. անոնց վը-
նաս մը չտուինք. ու անոնք Կար-
մեղոսի մէջ որչափ ատեն որ կեցան,
անոնց մէկ բանը չկորսուեցաւ։

իրր 1060

Գլ. իը. 3։

Բ Թուղ. ի. 29։ բ Օր. լդ. 8։

Ծն. իա. 21։ Սաղ. ճի. 5։

Գլ. իգ. 24։

Կամ՝ ստացուածքը

Յես. ժե. 55։

Կամ՝ չնաբարոյ

Ծն. լզ. 13։ բԹագ. ժգ. 23։

Գլ. ժէ. 22։

Ա Մն. ժր. 18։ Սաղ. ճիբ. 7։ Ղուկ. ժ. 5։

Բ Հմր 15, 21։

8 Քու մանչերուդ հարցուր, ու քեզի
թող ըսեն. ուստի աս մանչերը
քու աչքերուդ առջեւ շնորհք թող
գտնեն, քանզի բարի օր եկանք.
շնորհք ըրէ, քու ծառաներուդ՝ ու
քու որդւոյդ Դաւիթին՝ ձեռքէդ ե-
9 կածը տուր։ Եւ Դաւիթին ման-
չերը գացին, ու աս բոլոր խօսքե-
րուն համեմատ Դաւիթին անունովը
Նաբաղին զրուցեցին, ու կայնեցան։
10 Եւ Նաբաղ Դաւիթին ծառանե-
րուն պատասխան տուաւ, ու ըսաւ.
Դաւիթը ո՞վ է, ու Յեսսէի որդին
ո՞վ է. աս օրերս իրենց տէրերուն
երեսէն փախչող ծառաները շատ-
11 ցեր են։ Ուրեմն իմ հացս, ջուրս ու
ասրակտուր ընողներուս համար մոր-
թած անասուններս առնեմ՝ ու ա-
նո՞նց մարդիկներուն տամ, որոնց
12 ուսկից ըլլալը չեմ գիտեր։ Եւ
Դաւիթին մանչերը իրենց ճամբան
դարձան, ու գացին աս բոլոր խօս-
13 քերը անոր պատմեցին։ Եւ Դա-
ւիթ իր մարդիկներուն ըսաւ. Ամէն
մարդ իր սուրը մէջքը կապէ. ու
ամէն մարդ իր սուրը մէջքը կապեց.
և Դաւիթն ալ իր սուրը մէջքը
կապեց. ու Դաւիթին ետեւէն չորս
հարիւրի չափ մարդ ելաւ, ու երկու
հարիւր մարդ կարասիներուն
քովը մնացին։
14 Եւ ծառաներուն մէկը Նաբաղին
կնկանը Աբիգեային իմացուց՝ ու
ըսաւ. Ահա Դաւիթ անապատէն
մարդիկներ խրկեց մեր տէրը օրհնե-
լու համար. իսկ անիկայ *խստիւ
15 խօսեցաւ անոնց հետ։ Բայց ան
մարդիկները մեզի հետ շատ աղէկ
էին, ու մեզի վնաս մը չտուին. և
դաշտին մէջ որչափ ատեն որ անոնց
հետ պտըտեցանք, մեզմէ բան մը
16 չկորսուեցաւ։ Անոնք մեզի պա-
րիսպ էին, թէ գիշերը և թէ ցորե-
կը, որչափ ատեն որ անոնց քովը
17 ոչխարները կ'արածէինք։ Ու հի-
մա գիտցիր ու տես՝ թէ ինչ պիտի
ընես. քանզի մեր տիրոջը վրայ և
անոր բոլոր տանը վրայ չարիքը
հասած է. որովհետեւ անիկայ այն-
պէս չար մարդ մըն է, որ անոր
հետ մարդ չկրնար խօսիլ։
18 Եւ Աբիգեա շուտով երկու հա-
րիւր հաց, ու երկու տիկ գինի, և
հինգ †եփած ոչխար, ու հինգ գրիւ
բոհրած ցորեն, հարիւր ողկոյզ չա-
միչ, ու երկու հարիւր չորոց թուզ
առաւ, ու զանոնք էշերու վրայ
19 դրաւ։ Եւ իր ծառաներուն ը-
սաւ. Առջեւս անցէք. ահա ես
ձեր ետեւէն կու գամ. բայց իր էր-
20 կանը Նաբաղին չիմացուց։ Ու
երբոր կնիկը իշու վրայ հեծած՝
լերանը գոց տեղէն կ'իջնէր, ահա
Դաւիթ ու անոր մարդիկները անոր
առջեւը կ'իջնէին. ու անիկայ անոնց
21 հանդիպեցաւ։ Եւ Դաւիթ ըսեր
էր. Ուրեմն անապատին մէջ աս
մարդուն բոլոր ունեցած բաները
պարապ տեղը պահեր եմ. ու անոր
բոլոր ունեցածէն բան մը չկորսուե-
ցաւ. և անիկայ ինծի աղէկու-
թեան փոխարէն գէշութիւն ըրաւ։
22 Աստուած Դաւիթին թշնամինե-
րուն այսպէս՝ ու ասկէ աւելի ընէ,
թէ որ մինչեւ վաղը առտու անոր
մարդիկներէն ‡մէկ էրիկ մարդ՝ մը
ողջ թողում։
23 Ու Աբիգեա՝ Դաւիթը տեսածին
պէս՝ շուտով իշուն վրայէն իջաւ,
և Դաւիթին առջեւը երեսի վրայ
իյնալով, մինչեւ գետինը երկըր-
24 պագութիւն ըրաւ։ Ու անոր ոտ-
քը ինկաւ ու ըսաւ. Ո՜վ տէր իմ,
յանցանքը իմ վրաս ըլլայ. բայց
հրաման տուր՝ որ քու աղախինդ
քու առջեւդ խօսի, և քու աղախ-
25 նոյդ խօսքերը մտիկ ըրէ։ Կ'աղա-
չեմ՝ որ իմ տէրս աս չար մար-
դուն՝ Նաբաղին համար իր սրտին
մէջ բան մը չդնէ. քանզի իր ա-
նուանը պէս՝ ինքն ալ անանկ է.
անոր անունը ‖Նաբաղ է, ու անըզ-
գամութիւնը իր հետն է. բայց ես
քու աղախինդ իմ տիրոջս խրկած
26 մանչերը չտեսայ։ Եւ հիմա, ով
տէր իմ, Տէրը կենդանի է, ու
քու հոգիդ ալ կենդանի է, որ Տէ-
րը քեզ չթողուց որ արիւն մտնես,
ու քու վրէժդ քու ձեռքովդ առ-
նես. և հիմա քու թշնամիներդ
ու իմ տիրոջս գէշութիւն ուզող-
27 ները՝ Նաբաղին պէս ըլլան։ Ու
հիմա աս ընծան որ քու աղա-
խինդ իմ տիրոջս բերաւ, թող իմ
տիրոջս ետեւէն եկող մանչերուն
28 տրուի։ Կ'աղաչեմ, քու աղա-
խնիդ յանցանքը ներէ. քանզի
Տէրը իմ տիրոջս անպատճառ
հաստատ տուն պիտի շինէ. որով-
հետեւ իմ տէրս՝ Տէրոջը պատե-
րազմները պատերազմեցաւ, ու քու
օրերուդ մէջը քու վրադ չարու-
29 թիւն մը չգտնուեցաւ։ Բայց թէ-
և քեզ հալածելու ու քու հոգիդ
փնտռելու համար մէկ մարդ մը
ոտք ելած է, իմ տիրոջս հոգին՝
քու Տէր Աստուծոյդ առջեւը՝ կե-
նաց ծրարին մէջը ծրարած պիտի
ըլլայ. բայց անիկայ քու թշնամի-
ներուդ հոգիները՝ պարսատիկի մէ-
ջէ ելած քարի պէս պիտի նետէ։
30 Ու երբոր Տէրը բոլոր քեզի համար
ըսած աղէկութիւնները իմ տիրոջս
ընէ, ու քեզ Իսրայէլի վրայ թա-
31 գաւոր դնէ, Անիկայ քեզի գայ-
թակղութիւն մը ու իմ տիրոջս

Ն. Ք. գՔ. իբր 1060

Նեեմ. Ը. 10. Եսթ. Թ. 19.
Դատ. Թ. 28. Սաղ. ՀԳ. 7, 8. ՃԻԳ. 3, 4.
Դատ. Ը. 6.
Գլ. Լ. 24.
* Եբր. անոնց վրայ յարձակեցաւ.
Հմր 7.
Ել. ԺԴ. 22. Յոբ. Ա. 10.
Գլ. Ի. 7.
Բ Օր. ԺԳ. 13. Դատ. ԺԹ. 22.
Ծն. ԼԲ. 13. Առակ. ԺԸ. 16. ԻԱ. 14.
† Եբր. եղած
Ծն. ԼԲ. 16, 20.

Ն. Ք. գՔ. իբր 1060

Սաղ. ՃԹ. 5. Առակ. ԺԷ. 13.
Հռութ. Ա. 17. Գլ. Գ. 17. Ի. 13. 16.
Հմր 34.
‡ Եբր. պատի վրայ միզող. Գ Թագ. ԺԴ. 10. ԻԱ. 21. Դ Թագ. Թ. 8.
Յես. ԺԵ. 18. Դատ. Ա. 14.
‖ Այ՝ անըզգամ.
Դ Թագ. Բ. 2.
Ծն. Ի. 6. Հմր 33.
Հռով. ԺԲ. 19.
Բ Թագ. ԺԸ. 32.
Ծն. ԼԳ. 11. Գլ. Լ. 26. Դ Թագ. Ե. 15.
Հմր 42. Դատ. Դ. 10.
Բ Թագ. Է. 11, 27. Գ Թագ. Թ. 5. Մն. ԺԷ. 10, 25.
Գլ. ԺԸ. 17.
Գլ. ԻԴ. 12.
Երեմ. Ժ. 18.

Ն. Ք. ԶՔ. Իրր 1060

սրտին խիղճ մը չըլլայ, թէ առանց
պատճառի արիւն թափեցիր, կամ
թէ իմ տէրս իր վրէժը ինքը ա-
ռաւ. ու երբոր Տէրը իմ տիրոջս
բարութիւն ընէ, քու աղախինդ
միտքդ բերես։
32 Եւ Դաւիթ ըսաւ Աբիգեային.
«Օրհնեալ ըլլայ Իսրայէլին Տէր Աս-
տուածը, որ այսօր քեզ ղրկեց զիս
33 դիմաւորելու. Ու քու խոհեմու-
թիւնդ օրհնեալ ըլլայ, և դուն ալ
օրհնեալ ըլլաս, որ այսօր զիս ար-
գիլեցիր որ արիւն չմտնեմ, ու իմ
34 վրէժս ձեռքովս չառնեմ։ Բայց
Իսրայէլին Տէր Աստուածը՝ որ զիս
արգիլեց քեզի չարութիւն ընելէն,
կենդանի է, թէ որ դուն շուտով
չգայիր՝ ու առջևս չելլէիր, մինչև
վաղը առտու Նաբաղին մէկ էրիկ
35 մարդը չէր մնար։ Եւ Դաւիթ ա-
նոր բերած ընծաները ձեռքէն ա-
ռաւ, ու անոր ըսաւ. «Խաղաղու-
թեամբ տունդ գնա. ահա խօսքդ
մտիկ ըրի, ու քու խնդիրքդ ըն-
դունեցի։
36 Եւ Աբիգեա Նաբաղին գնաց ու
ահա անիկայ իր տանը մէջ թա-
գաւորական կոչունքի պէս կոչունք
կ՚ընէր. և Նաբաղին սիրտը ուրախ
թացեր էր, ու անիկայ շատ գի-
նովցեր էր. ուստի կնիկը մինչև ա-
ռաւօտեան լոյսը՝ պզտիկ կամ մեծ
37 բան մը չպատմեց անոր։ Եւ ա-
ռաւօտուն երբոր Նաբաղ գինիէն
զգաստացաւ, անոր կնիկը
աս բաները անոր պատմեց ու ա-
նոր սիրտը իր ներսը դին մեռաւ,
38 ու քարի պէս եղաւ։ Եւ տասը
օրի չափ անցնելէն ետև, Տէրը զար-
կաւ Նաբաղը, որ մեռաւ։
39 Ու Դաւիթ Նաբաղին մեռնիլը
լսելով՝ ըսաւ. «Օրհնեալ է Տէրը,
որ Նաբաղին ձեռքէն ունեցած նա-
խատինքիս դատաստանը ինքը
դատեց, ու իր ծառան չարութե-
նէ ետ պահեց. և Տէրը Նաբաղին
չարութիւնը անոր գլուխը դար-
ձուց։ Ու Դաւիթ մարդ ղրկեց և
Աբիգեային խօսեցաւ, որ զանիկայ
40 իրեն կնիկ առնէ։ Ու Դաւիթին
ծառաները Կարմեղոս գացին Աբի-
գեային, ու անոր հետ խօսեցան ու
ըսին. «Դաւիթ մեզ քեզի ղրկեց,
41 որ քեզ իրեն կնիկ առնէ։ Եւ ա-
նիկայ ելաւ, ու երեսի վրայ մինչև
գետինը երկրպագութիւն ըրաւ ու
ըսաւ. «Ահա քու աղախինդ իմ
տիրոջս ծառաներուն ոտքերը լուա-
լու համար աղախին թող ըլլայ։
42 Եւ Աբիգեա շուտով ոտք ելաւ ու
էշ իրեն սպասաւորութիւն ընող
հինգ աղջիկներու հետ էշը հեծաւ,
ու Դաւիթին պատգամաւորներուն
ետևէն գնաց, և անոր կնիկը եղաւ։
43 Ու Դաւիթ Յեզրայելէն ալ Ա-
քինոամը առաւ. ու ասոնց եր-
կուքն ալ անոր կնիկները եղան։
44 Բայց Սաւուղ իր Մեղքող աղջիկը՝
որ Դաւիթին կնիկն էր՝ Գաղղի-
մացի Լայիսի որդւոյն Փաղտիե-
լին տուաւ։

## ԳԼ. ԻԶ

1 Սաւուղ Զիփացիներէն լուր առնելով՝ Եքե-
ղա կու գայ Դաւիթին դէմ։ 4 Դաւիթ կառ-
քերուն տեղը երթալով՝ կ՚արգիլէ Աբեսսան
որ Սաւուղը չմեռցընէ, բայց Սաւուղին նի-
զակը ու կուժը կ՚առնէ։ 13 Դաւիթ Աբեն-
ները կը յանդիմանէ. 18 ու Սաւուղը կը յոր-
դորէ։ 21 Սաւուղ իր յանցանքը կը խոստո-
վանի։

1 Եւ Զիփացիք Գաբաա գացին Սա-
ւուղին, ու ըսին. «Ահա Դա-
ւիթ Եսիմոնի դիմացը Եքեղայի
2 բլուրին վրայ պահուեր է։ Ու
Սաւուղ ելաւ Զիփի անապատը ի-
ջաւ Իսրայէլին իրեք հազար ընտ-
րուած մարդիկներովը, որ Զիփի
անապատին մէջ Դաւիթը փնտռէ։
3 Եւ Սաւուղ Եսիմոնի դիմացը Ե-
քեղայի բլուրը՝ ճամբուն վրայ բա-
նակեցաւ։ Դաւիթն ալ անապա-
տին մէջը նստեր էր. ու երբոր տե-
սաւ որ Սաւուղ իր ետևէն անա-
4 պատը կու գայ, Դաւիթ լրտեսներ
ղրկեց, ու Սաւուղին ստոյգ գալը
իմացաւ։
5 Ու Դաւիթ վեր ելաւ և
Սաւուղին բանակ դրած տեղը ե-
կաւ. ու Դաւիթ՝ Սաւուղին ու ա-
նոր զօրավարին Ներեան Աբեննե-
րին պառկած տեղը տեսաւ. բայց
Սաւուղ կառքերուն մէջտեղը
պառկեր էր, ու ժողովուրդը անոր
6 բոլորտիքը բանակեր էին։ Եւ Դա-
ւիթ պատասխան տուաւ, ու Քե-
տացի Աքիմելեքին ու Յովաբին
եղբօրը Շարուհեան Աբեսսային
ըսաւ. «Ո՞վ իննծի հետ Սաւուղին
քով բանակը կ՚իջնէ։ Ու Աբես-
սա ըսաւ. «Ես քեզի հետ կ՚իջնեմ։
7 Եւ Դաւիթ Աբեսսային հետ գիշե-
րով ժողովուրդին մէջը մտաւ. և
ահա Սաւուղ կառքերուն մէջտեղը
պառկեր կը քնանար անոր նիզա-
կը գլխուն քովը գետինը ցցուած
էր, և Աբենները ու ժողովուրդը
անոր բոլորտիքը պառկեր էին։
8 Եւ Աբեսսա Դաւիթին ըսաւ. «Աս-
տուած այսօր քու թշնամիդ քու
ձեռքդ մատնեց. ու հիմա թող
տուր որ նիզակով մէկ անգամէն
գետինը գամեմ զանիկայ, ու չկրկ-
9 նեմ հարուածը։ Բայց Դաւիթ՝
Աբեսսային ըսաւ. «Զանիկայ մի
մեռցըներ. քանզի Տէրոջը օծեա-
լին ո՞վ կրնայ ձեռք երկնցընել ու
10 անմեղ ըլլալ։ Եւ Դաւիթ ըսաւ

Ն. Ք. ԶՔ. Իրր 1060

ա Յես. ԺԵ. 56։ Բ Գլ. ԻԷ. 3։ Լ. 5։ գ Բ Թագ. Գ. 14։ Ե Եւ. Ժ. 30։ Ի Բ Թագ. Գ. 15։

ա Գլ. ԻԳ. 19։ Սաղ. ԾԳ. ին վերնագիրը։

Բ Գլ. ԺԳ. 50. ԺԷ. 55։

Գ Գլ. ԺԷ. 20։

Դ Մն. Բ. 16։ Բ Թագ. Ե. 10, 11։

Է Գլ. ԻԴ. 19։

Զ Եբր. զարնեմ

Ը Գլ. ԻԴ. 7։ Բ Թագ. Ա. 16։

ա Ծն. Ի. 27։ Եւ. ԺԲ. 10։ Սաղ. Խա. 13։ Հբ. 18։ Ղու. Ա. 68։

ե Հմր 26։

զ Հմր 26։

Է Հմր 22։

Ը Գլ. Ի. 42։ Բ Թագ. ԺԵ. 9։ Դ Թագ. Ե. 19։ Ղու. Է. 50։ Ը. 48։

Թ Ծն. ԺԹ. 21։

Ժ Եբր. երեսդ էր. Բ Թագ. ԺԴ. 23։

Ի Հմր 32։

Լ Առակ. ԻԲ. 23։

Խ Հմր 26, 34։ Գ Թագ. Բ. 44։ Սաղ. Է. 16։

Ծ Հռով. ԺԲ. 19։ Առակ. ԺԵ. 33։

Կ Հմր 27։

Ն. Ք. զՔ.
իրր 1060

Տէրը կենդանի է որ [ը] զանիկայ Տէ-
րը պիտի զարնէ , կամ [թ] անոր ա-
տենը պիտի գայ ու մեռնի , կամ
թէ [ժ] պատերազմի մէջ պիտի մտնէ
11 ու մեռնի ։ [ի] Աստուած չընէ որ Տէ-
րոջը օծեալին դէմ ձեռքս երկընցը-
նեմ . միայն թէ հիմա անոր գըլ-
խուն քովի նիզակը ու ջուրին կու-
12 ժը առ , ու երթանք ։ Եւ Դաւիթ
Սաւուղին գլխուն քովէն նիզակը
ու ջուրին կուժը առաւ , ու գացին .
և տեսնող չկար , իմացող չկար ու
արթընցող չկար . որովհետև ա-
մէնքը կը քնանային . քանզի [լ] Տէ-
րոջը կողմանէ անոնց վրայ խորունկ
քուն մը ինկեր էր ։
13 Եւ Դաւիթ մէկալ կողմը ան-
ցաւ , ու լեռանը գլխուն վրայ՝ հե-
ռուանց կայնեցաւ , ու անոնց մէջը
14 մեծ միջոց կար ։ Եւ Դաւիթ ժո-
ղովուրդին ու Ներեան Աբեններին
կանչելով ըսաւ . Ո՛վ Աբեններ ,
պատասխան չե՞ս տար . ու Աբեն-
ներ պատասխան տուաւ , ու ըսաւ .
Դուն ո՛վ ես , որ թագաւորին կը
15 կանչես ։ Եւ Դաւիթ Աբեններին
ըսաւ . Դուն էրիկ մարդ չե՞ս . ու
Իսրայէլին մէջ քեզի պէս ո՞վ կայ .
ու ինչո՞ւ համար քու տիրոջդ թա-
գաւորին պահպանութիւն չըրիր .
քանզի ժողովուրդէն մէկը՝ քու
տէրդ թագաւորը մեռցընելու ե-
16 կաւ ։ Աս քու ըրած բանդ աղէկ
չէ . կենդանի է Տէրը՝ որ դուք
[խ] մեռնելու արժանի էք . քանզի
Տէրոջը օծեալին՝ ձեր տիրոջը
պահպանութիւն չըրիք . ու հիմա
նայէ , թագաւորին նիզակը ու ա-
նոր գլխուն քովի ջուրին կուժը
17 ո՞ւր է ։ Ան ատենը Սաւուղ Դաւի-
թին ձայնը ճանչցաւ՝ ու ըսաւ .
[ծ] Որդեա՛կ իմ Դաւիթ՝ ատիկայ
քո՞ւ ձայնդ է . ու Դաւիթ ըսաւ .
Ո՛վ տէր իմ թագաւոր , իմ ձայնս
18 է . Ու ըսաւ . Իմ տէրս [կ] ինչո՞ւ
համար այդպէս իր ծառային ե-
տևէն ինկեր է . քանզի ի՞նչ ըրի ,
ու ձեռքիս մէջը ի՞նչ չարութիւն
19 կայ ։ Եւ հիմա իմ տէրս թագա-
ւորը իր ծառային խօսքերը թող
մտիկ ընէ . թէ որ Տէրը [հ] քեզ իմ
վրաս ոտք հանեց , թող զո՛հ մը
*ընդունի . բայց թէ որ մարդոց
որդիքը [ձ] ոտք հանեցին , անոնք Տէրո-
ջը առջևը անիծեա՛լ ըլլան . [յ] քան-
զի զիս այսօր վռընտեցին՝ որ [ղ] Տէ-
րոջը ժառանգութեանը հետ չմի-
անամ , ու ինծի՛ ըսին . Գնա՛ օտար
աստուածներու ծառայութիւն ը-
20 րէ ։ Եւ հիմա Տէրոջը առջևը իմ
արիւնս գետինը չի՛ յնայ . քանզի
Իսրայէլին թագաւորը [ճ] մէկ լու մը
փնտռելու ելաւ , ինչպէս որ մէկ

ը Գլ. իե. 38 ։ Սաղ. ղդ. 1 , 2 , 23 ։ Ղու. ժը. 7 ։ Հռով. ժբ. 19 ։
թ Տես Ծն. խէ. 29 ։ բ Օր. լա. 14 ։ Յոբ. է. 1 ։ ժդ. 5 ։ Սաղ. լէ. 13 ։
ժ Գլ. լա. 6 ։
ի Գլ. իդ. 7 ։ 13 ։
լ Ծն. բ. 21 ։ ժե. 12 ։
խ Բ Թագ. ժբ. 5 ։
ծ Գլ. իդ. 17 ։
կ Գլ. իդ. 10 ։ 12 ։
հ Բ Թագ. ժզ. 11 ։ իդ. 1 ։
* Եբր. հոտոտայ ։
ձ Ծն. ը. 21 ։ Ղև. իզ. 31 ։
յ Բ Օր. դ. 28 ։ Սաղ. ճի. 5 ։
ղ Բ Թագ. ժդ. 16 ։ ի. 19 ։
ճ Գլ. իդ. 15 ։

մարդ մը լեռներու վրայ կաքաւի
մը ետևէ կ՚իյնայ ։
21 Ու Սաւուղ ըսաւ . [մ] Մեղք գոր-
ծեցի . դարձիր՝ որդեակ իմ Դա-
ւիթ . իմ հոգիս այսօր [յ] քու աչքե-
րուդ պատուական երևնալուն հա-
մար՝ քեզի մէյմըն ալ չարութիւն
պիտի չընեմ . ահա՛ յիմարութիւն
22 ըրի , ու մեծապէս սխալեցայ ։ Եւ
Դաւիթ պատասխան տուաւ ու ը-
սաւ . Ահա թագաւորին նիզակը .
մանչերուն մէկը թող գա՛յ՝ ու զա-
23 նիկայ առնէ ։ [ն] Եւ Տէրը ամէն
մարդուն իր արդարութեանը ու իր
հաւատարմութեանը փոխարէնը
հատուցանէ . որովհետև Տէրը քեզ
այսօր իմ ձեռքս տուաւ , բայց ես
Տէրոջը օծեալին ձեռքս երկընցընել
24 չուզեցի ։ Եւ ահա՛ ինչպէս որ քու
հոգիդ այսօր իմ աչքերուս պա-
տուական երևցաւ , իմ հոգիս ալ
Տէրոջը առջևը այնպէս պատուական
երևնայ , ու զիս ամէն նեղութենէ
25 ազատէ ։ Եւ Սաւուղ Դաւիթին
ըսաւ . Որդեա՛կ իմ Դաւիթ , օրհ-
նեա՛լ ըլլաս . † քու գործքերուդ
մէջ յաջողութիւն պիտի գտնես՛ ,
ու նաև [շ] յաղթող պիտի ըլլաս ։
Եւ Դաւիթ իր ճամբան գնաց , ու
Սաւուղ իր տեղը դարձաւ ։

Ն. Ք. զՔ.
իրր 1060

մ Գլ. ժե. 24 ։ իդ. 18 ։
յ Գլ. ժը. 30 ։
ն Սաղ. է. 8 ։ ժը. 20 ։
† Եբր. ընելով պիտի ընես ։
շ Ծն. լբ. 28 ։

## ԳԼ. ԻԷ

1 Սաւուղ՝ Դաւիթին Գեթի մէջ ըլլալը լսելով՝ ալ անոր ետևէն չիյնար ։ 5 Դաւիթ Սիկելակը կը խնդրէ Անքուսէն . 8 և ուրիշ կողմերու վրայ յարձակելով՝ Անքուսին կը հաւատացընէ թէ Յուդայի դէմ պատերազմեր է ։

իրր 1058

1 Ու Դաւիթ իր սրտին մէջը ըսաւ .
Վերջապէս մէկ օր մը Սաւուղին
ձեռքովը պիտի կորսուիմ . ինծի
Փղշտացւոց երկիրը փախչելէն աղէ-
կը չկայ , որ Սաւուղ ինծմէ յոյսը
կտրէ , ու զիս մէյմըն ալ Իսրայէլի
բոլոր սահմաններուն մէջ չփնտռէ .
այսպէս անոր ձեռքէն կ՚ազատիմ ։
2 Ու Դաւիթ՝ [ա] իր հետը եղող վեց
հարիւր մարդով ելաւ , ու Գեթի
թագաւորին Մաովքի որդւոյն [բ] Ան-
3 քուսին քովը գնաց ։ Եւ Դաւիթ
ինքը ու իր մարդիկները՝ իւրաքան-
չիւր մարդ իր տնովը՝ Դաւիթ ալ
[գ] իր երկու կնիկներովը՝ Յեզրայելա-
ցի Աքինոամին հետ ու Կարմելացի
Նաբաղին կնկանը Աբիգեային հետ՝
Անքուսին քովը Գեթի մէջ բնակե-
4 ցան ։ Ու երբոր Սաւուղին իմա-
ցուցին , թէ Դաւիթ Գէթ փա-
խեր է , մէյմըն ալ զանիկայ չփնտը-
ռեց ։
5 Եւ Դաւիթ Անքուսին ըսաւ .
Կ՚աղաչեմ , թէ որ քու առջևդ շը-
նորհք գտայ , գիւղաքաղաքներուն
մէկուն մէջ ինծի տեղ տրուի , որ
հոն նստիմ . քանզի քու ծառադ

ա Գլ. իե. 13 ։
բ Գլ. իա. 10 ։
գ Գլ. իե. 43 ։

Ն. Ք. ԳՔ. Իբր 1058

դ Տես Ցես. ԺԵ. 31։ ԺԹ. 5։
ե Տես ԳԼ ԻԹ. 3։
զ Ցես. ԺԳ. 2։
է Ցես. ԺԳ. 10։ Դատ. Ա. 29։
* Կամ՝ Գերզացւոց
ը Ել. ԺԷ. 16։ Տես գլ. ԺԵ. 7, 8։
ր Ծն. ԻԵ. 18։
ժ Տես Ա Մն. Բ. 9, 25։
ի Դատ. Ա. 16։
† Կամ՝ այսպէս բրաւ, ու անոր սովորութիւնը սանկ պիտի ըլլայ՝ քանի որ Փղշտացւոց երկրին մէջը կը նստի։

ինչո՞ւ համար քեզի հետ թագա-
ւորանիստ քաղաքին մէջը նստի։
6 Եւ այն օրը Անքուս Սիկելակը
տուաւ անոր. աս պատճառով
դ Սիկելակը մինչև աս օրս Յուդայի
7 թագաւորներուն եղաւ։ Ու Փը-
ղշտացւոց երկրին մէջը Դաւիթին
նստած օրերուն թիւը՝ ե մէկ տարի
ու չորս ամիս եղաւ։
8 Եւ Դաւիթ ու անոր մարդիկները
ելան, և զ Գեսուրացւոց, է *Գա-
զերացւոց ու ը Ամաղեկացւոց վրայ
յարձակեցան. քանզի անոնք շա-
տոնցմէ 'ի վեր այն երկրին մէջ կը
բնակէին, ր Սուրէն մինչև Եգիպ-
9 տոսի երկիրը։ Եւ Դաւիթ այն եր-
կիրը զարկաւ, ու ամենևին էրիկ
մարդ մը կամ կնիկ մարդ մը ողջ
չթողուց. և ոչխարները ու ար-
ջառները ու էշերը և ուղտերը ու
հանդերձները առաւ, և դարձաւ
10 Անքուսին եկաւ։ Ու Անքուս ը-
սաւ. Այսօր ո՞ր կողմը յարձակե-
ցաք. և Դաւիթ ըսաւ. Յուդայի
հարաւային կողմը, ժ Յերամելա-
ցւոց հարաւային կողմը, ու ի Կենե-
11 ցւոց հարաւային կողմը։ Եւ Դա-
ւիթ մէկ էրիկ կամ կնիկ մարդ մը
ողջ չթողուց, որ Գէթը լուր բե-
րէ. քանզի ըսաւ. Չըլլայ որ մեզի
համար պատմեն ու ըսեն թէ՝ Դա-
ւիթ †այսպէս բրաւ։ Ու անոր
սովորութիւնը սանկ էր, քանի
որ Փղշտացւոց երկրին մէջը կը
12 նստէր"։ Եւ Անքուս Դաւիթին
հաւատալով՝ ըսաւ. Աս մարդը՝ իր
ժողովուրդին Իսրայէլին քովը ինք-
զինքը խիստ ատելի ընելուն հա-
մար, ինծի յաւիտեան ծառայ պի-
տի ըլլայ։

## ԳԼ. ԻԸ

1 Անքուս Դաւիթին վրայ կը վստահանայ։ 3 Սաւուղ վհուկները ջարդելէն ետև, երբոր երկիւղի մէջ կ'իյնայ, Աստուծոյ երեսէն ձգուած ըլլալով՝ 7 վհուկ մը կը փնտռէ, 9 ու Սամուէլը հանել կու տայ։ 15 Սաւուղ իր կործանումը լսելով՝ կ'այլայլի։ 21 Կնիկը և Սաւուղին ծառաները կերակուրով կը զօրացընեն զանիկայ։

ա Գլ. ԻԹ. 1։ Իբր 1056

1 ա Եւ այն օրերը Փղշտացիք իրենց
զօրքերը ժողվեցին, որ ելլեն
Իսրայէլին հետ պատերազմին. և
Անքուս՝ Դաւիթին ըսաւ. Գիտ-
ցած ըլլաս որ դուն քու մարդիկնե-
րովդ իմ հետս բանակը պիտի ել-
2 լես։ Ու Դաւիթ՝ Անքուսին ը-
սաւ. Ուրեմն ծառայիդ ընելու
գործը պիտի տեսնես. և Անքուս՝
Դաւիթին ըսաւ. Անոր համար
քեզ միշտ ինծի անձնապահ պիտի
ընեմ։

բ Գլ. ԻԵ. 1։

3 Իսկ բ Սամուէլ մեռած էր. և
բոլոր Իսրայէլը անոր համար սուգ
ըրեր էին, ու զանիկայ իր քաղաքը՝
Ռամայի մէջ թաղեր էին։ Սա-
ւուղ ալ գ վհուկները ու նշանա-
գէտները երկրէն վերցուցեր էր։
4 Եւ Փղշտացիք ժողվուեցան, ու
եկան դ Սունամի մէջ բանակեցան.
Սաւուղն ալ բոլոր Իսրայէլը ժող-
վեց, ու ե Գեղբուէի մէջ բանակե-
5 ցան։ Եւ Սաւուղ Փղշտացւոց բա-
նակը տեսնելով՝ զ վախցաւ, ու սիր-
6 տը շատ դողաց։ Եւ Սաւուղ Տէրոջը
հարցուց. բայց Տէրը՝ թէ է երազ-
ներով՝ թէ ը Ուրիմով և թէ մար-
գարէներով՝ ր անոր պատասխան
7 չտուաւ։ Այն ատենը Սաւուղ իր
ծառաներուն ըսաւ. Ինծի մէկ վը-
հուկ կնիկ մը փնտռեցէք՝ որ եր-
թամ անոր հարցընեմ։ Եւ ծա-
ռաները անոր ըսին. Ահա Ենդովրի
մէջ մէկ վհուկ կնիկ մը կայ։
8 Ու Սաւուղ՝ իր հանդերձները
փոխելով, ուրիշ հանդերձներ հա-
գաւ, և իրեն հետ եղող երկու
մարդով գնաց, ու գիշերով այն
կնկանը քովը հասան։ ժ Եւ Սա-
ւուղ ըսաւ. Շնորհք ըրէ, ինծի
վհուկի ոգւով գուշակութիւն ըրէ,
ու քեզի ըսելու մարդս ինծի վե՛ր
9 հանէ։ Եւ կնիկը անոր ըսաւ.
Ահա դուն Սաւուղին ըրած բանը
գիտես, թէ ինչպէս անիկայ ի վը-
հուկները ու նշանագէտները երկրէն
բնաջինջ ըրաւ. ուրեմն ինչո՞ւ զիս
մեռցընելու համար իմ անձիս որո-
10 գայթ կը պատրաստես։ Եւ Սա-
ւուղ Տէրոջմով երդում ըրաւ ա-
նոր՝ ու ըսաւ. Տէրը կենդանի է
որ՝ աս բանէն քեզի մէկ վնաս մը
11 պիտի չպատահի։ Այն ատենը կնիկը
ըսաւ. Քեզի ո՞վ վեր հանեմ. ու
անիկայ ըսաւ. Սամուէլը հանէ
ինծի։
12 Եւ կնիկը Սամուէլը տեսնելով,
մեծ ձայնով մը պոռաց. ու կնիկը
Սաւուղին խօսեցաւ ու ըսաւ. Ին-
չո՞ւ զիս խաբեցիր. քանզի դուն
13 Սաւուղն ես։ Եւ թագաւորը ա-
նոր ըսաւ. Մի վախնար. բայց
ի՞նչ տեսար։ Ու կնիկը Սաւու-
ղին ըսաւ. Գետնէն ելլող աս-
14 տուածներ տեսայ։ Եւ Սաւուղ ա-
նոր ըսաւ. Անոր կերպարանքը
ի՞նչպէս է։ Ու կնիկը ըսաւ. Ահա
մէկ ծեր մարդ մը կ'ելլէ, ու լ վե-
րարկու մը հագած է։ Եւ Սաւուղ
հասկցաւ որ անիկայ Սամուէլն է.
ու երեսը գետինը ծռելով՝ անոր եր-
15 կրպագութիւն ըրաւ։ Եւ Սա-
մուէլ ըսաւ Սաւուղին. Ինչո՞ւ հա-
մար ինծի նեղութիւն տուիր, ու
զիս վեր հանեցիր։ Եւ Սաւուղ
ըսաւ. խ Ես մեծ նեղութեան մէջ
եմ, որովհետև Փղշտացիք ինծի
հետ պատերազմ կ'ընեն, ու ծ Աս-

Ն. Ք. ԺՆ. Իբր 1560

գ Հմր 9։ Ել. ԻԲ. 18։ Ղև. ԺԹ. 31։ Ի. 27։ Բ Օր. ԺԸ. 10, 11։
դ Ցես. ԺԹ. 18։ Դ Թագ. Դ. 8։
ե Գլ. ԼԱ. 1։
զ Ցոր. ԺԸ. 11։
է Թու. ԺԲ. 6։
ը Ել. ԻԸ. 30։ Թու. ԻԷ. 21։ Բ Օր. ԼԳ. 8։
ր Գլ. ԺԴ. 37։ Առակ. Ա. 28։ Ողբ. Բ. 9։
ժ Բ Օր. ԺԸ. 11։ Ա Մն. Ժ. 13։ Ես. Ը. 19։
ի Հմր 3։
լ Գլ. ԺԵ. 27։ Դ Թագ. Բ. 8, 13։
խ Առակ. Ե. 11, 12, 13։ ԺԴ. 14։
ծ Գլ. ԺԸ. 12։

Ն. Ք. ԳՔ. Իբր 1056

ա Հռմ 6.

տուած ինծմէ հեռացաւ . և ինծի
թէ մարգարէներու միջոցով և թէ
երազներով պատասխան չտար . ա-
նոր համար քեզ կանչեցի . որ ինծի
16 իմացընես թէ ինչ ընեմ ։ Եւ
Սամուէլ ըսաւ . Ինչո՞ւ համար ին-
ծի կը հարցընես . հիմա որ Տէրը
քեզմէ հեռացաւ՝ ու քեզի թշնամի
17 եղաւ . Եւ Տէրը ^իմ *բերնովս
զրուցածին պէս †ըրաւ . ու Տէրը
քու ձեռքէդ թագաւորութիւնը
պատռեց , և զանիկայ քու ընկերիդ
18 Դաւիթին տուաւ ։ ^Քանզի դուն
Տէրոջը խօսքը մտիկ չըրիր . ու Ա-
մաղէկին վրայ՝ անոր սաստիկ բար-
կութիւնը ՚ի գործ չդրիր . անոր հա-
մար այսօր Տէրը քեզի աս բանը ը-
19 րաւ ։ Եւ Տէրը՝ քեզի հետ Իսրա-
յէլն ալ Փղշտացւոց ձեռքը պիտի
մատնէ . ու վաղը դուն ու քու որ-
դիքդ իմ քովս պիտի ըլլաք . ^
Տէրը Իսրայէլին բանակն ալ Փղշ-
տացւոց ձեռքը պիտի մատնէ ։

ա Գլ. ԺԵ. 28.
* Եբր. ձեռքովս
† Եբր. իրեն համար ըրաւ
յ Գլ. ԺԵ. 9. գ Թագ. Ի. 42. ա Մն. Ժ. 13. Երեմ. ԽԸ. 10.

20 Ան ատենը Սաւուղ շուտով ին-
կաւ . ու գետնի վրայ փռուեցաւ . և
Սամուէլին խօսքերէն շատ վախ-
ցաւ . ու ամենևին վրան ուժ չմնաց .
քանզի բոլոր օրը ու բոլոր գիշերը
21 հաց կերած չէր ։ Եւ կնիկը Սաւու-
ղին քովը գնաց . ու անոր չափա-
զանց սոսկումը տեսնելով՝ անոր
ըսաւ . Ահա քու աղախինդ քու
խօսքդ մտիկ ըրաւ . և ^իմ հոգիս
ձեռքիս մէջը դնելով . ինծի ըսած
խօսքերուդ հնազանդութիւն ըրի ։
22 Եւ հիմա կ'աղաչեմ , դուն ալ քու
աղախնիդ խօսքը մտիկ ըրէ , ու
քու առջևդ պատառ մը հաց դնեմ՝
ու կեր , որ ուժ առնես . քանզի
23 ճամբայ պիտի երթաս ։ Բայց ա-
նիկայ չուզեց , ու Չեմ ուտեր . ը-
սաւ . սակայն երբոր իր ծառաները
ու կնիկն ալ զանիկայ բռնադա-
տեցին , անոնց խօսքը մտիկ ըրաւ .
ու գետնէն ելլելով՝ անկողինին
24 վրայ նստաւ ։ Եւ կնիկը իր տանը
մէջ սնուցած որթ մը ունէր . շու-
տով զանիկայ մորթեց . ու ալիւր
առաւ շաղեց , և անով բաղարջ
25 հացեր եփեց . Ու Սաւուղին առջևը
և անոր ծառաներուն առջևը դրաւ .
ու կերան , ու ելան նոյն գիշերը
գացին ։

ւ Դատ. ԺԲ. 3. Գլ. ԺԹ. 5. Յոբ. ԺԳ. 14.

## ԳԼ. ԻԹ

1 Դաւիթին Փղշտացւոց հետ պատերազմի երթալը՝ 3 անոնց նախարարներուն հաճելի չերևնար . 6 Անքուս ետ կը խրկէ Դաւիթը՝ անոր հաւատարմութիւնը գովելով ։

1 Եւ ^Փղշտացիք իրենց բոլոր բա-
նակները ^Ափեկի մէջ ժողվեցին .
ու Իսրայէլացիք Յեզրայելի մէջ ե-
ղող աղբիւրին քովը բանակեցան ։

ա Գլ. ԻԸ. 1.
բ Գլ. Դ. 1.

Ն. Ք. ԳՔ. Իբր 1056

2 Եւ Փղշտացւոց նախարարները ի-
րենց հարիւրաւորներովը ու հազա-
րաւորներովը կ'անցնէին . և Դա-
ւիթ ու իր մարդիկները անոնց
ետևէն ^Անքուսին հետ կ'անցնէին ։
3 Ու Փղշտացւոց իշխանները ըսին .
Աս Եբրայեցիները ի՞նչ պիտի ըլ-
լան ։ Եւ Անքուս՝ Փղշտացւոց իշ-
խաններուն ըսաւ . Ասիկայ Իսրա-
յէլի թագաւորին Սաւուղին ծա-
ռան Դաւիթը չէ՞ , որ ^այսչափ
օրերէ՝ կամ մանաւանդ այսչափ
տարիներէ ՚ի վեր՝ իմ քովս է . ու
^ինծի ինկած օրէն մինչև աս օրս՝
^անոր վրայ ամենևին մէկ յանցանք
4 մը չգտայ ։ Եւ Փղշտացւոց իշխան-
ները անոր սրդողեցան . ու Փղշտա-
ցւոց իշխանները անոր ըսին . ^Այդ
մարդը ետ խրկէ . ու երթայ իր
տեղը , ուր որ զանիկայ դրիր . ու
մեր հետը պատերազմի մէջ չմտնէ .
չըլլայ որ ^պատերազմին մէջ մեզի
թշնամութիւն ընէ . քանզի անի-
կայ ինչո՞վ պիտի հաշտուի իր տի-
րոջը հետ . չէ՞ որ աս մարդոցը գլ-
5 լուխներովը ։ Ասիկայ ան Դաւիթը
չէ՞ , որուն համար ^երգերը պար
բռնելով ու պատասխան տալով
կ'ըսէին . ^Սաւուղ իր հազարա-
ւորները զարկաւ , ու Դաւիթ իր
բիւրաւորները ։

գ Գլ. ԻԷ. 1. 2.
դ Տես Գլ. ԻԷ. 7.
ե Դան. Զ. 5.
զ Մն. ԺԲ. 19.
է Գլ. ԺԴ. 21.
ը Գլ. ԺԸ. 7. ԻԱ. 11.

6 Եւ Անքուս Դաւիթը կանչեց ,
ու անոր ըսաւ . Տէրը կենդանի է
որ դուն շիտակ մարդ մըն ես . և
իմ հետս բանակին մէջը ^մտնելդ
ու ելլելդ՝ իմ աչքիս աղէկ կ'երև-
նայ . ^քանզի ինծի եկած օրէդ
մինչև աս օրս՝ քու վրադ չարու-
թիւն մը չգտայ . բայց դուն նա-
խարարներուն աչքին աղէկ չես ե-
7 րևնար . Ուստի հիմա դարձիր և
խաղաղութեամբ գնա , ու Փղշտա-
ցւոց նախարարներուն աչքին գէշ
8 երևցածը մի ըներ ։ Եւ Դաւիթ
Անքուսին ըսաւ . Բայց ես ի՞նչ
ըրի . ու քու առջևդ կայնած օրէս
մինչև աս օրս՝ ծառայիդ վրայ ի՞նչ
գտար , որ ես չերթամ՝ ու իմ տի-
րոջս թագաւորին թշնամիներուն
9 հետ պատերազմ չընեմ ։ Եւ Ան-
քուս պատասխան տուաւ , ու Դա-
ւիթին ըսաւ . Գիտեմ որ դուն իմ
աչքերուս՝ ^Աստուծոյ հրեշտա-
կին պէս աղէկ կ'երևնաս . բայց
^Փղշտացւոց իշխանները ըսին թէ՝
Անիկայ մեր հետը պատերազմի չել-
10 լէ ։ Ուստի առաւօտուն կանուխ
ելի՛ր՝ դուն ու քու տիրոջդ ծառա-
ները որոնք քու հետդ եկան . ա-
ռաւօտուն կանուխ ելէ՛ք՝ ու լուս-
11 ցածին պէս գացէ՛ք ։ Եւ Դաւիթ
ինքը ու իր մարդիկները առաւօ-
տուն կանուխ ելան որ երթան , ու

թ բ Թագ. Դ. 25. դ Թագ. ԺԹ. 27.
ժ Հռմ 3.
ի բ Թագ. ԺԴ. 17. 20. ԺԹ. 27.
լ Հռմ 4.

Ն · Ք · Ղ · Ք · Տիր 1056

Ի բ Թագ · դ · 4 ։

Փղշտացւոց երկիրը դառնան . Իսկ
Փղշտացիք Յեզրայէլ ելան ։

## ԳԼ · Լ

1 Ամաղեկացիք Սիկելակը կը կողոպտեն ։ 4 Դաւիթ Աստուծոյ հարցընելով՝ կը քաջալերուի որ անոնց ետևէն իյնայ . 11 ու Եգիպտացիի մը առաջնորդութեամբը թշնամեաց վրայ կը հասնի , ու բոլոր աւարը ետ կ'առնէ ։ 22 Դաւիթ օրէնք կը հաստատէ աւարը հաւասարապէս բաժնելու՝ թէ պատերազմ ընող և թէ պահպանութիւն ընող զօրքերուն մէջտեղը ։ 26 Դաւիթ իր բարեկամներուն ընծաներ կը խրկէ ։

1 Ու երբոր Դաւիթ ու իր մարդիկ-
ները երրորդ օրը Սիկելակ մտան ,
* ահա ** Ամաղեկացիք հարաւային
երկրին ու Սիկելակին վրայ յար-
ձակեր էին . և Սիկելակը զարնելով՝
2 զանիկայ կրակով այրեր էին . Ու
հոն եղած կնիկները գերի առեր
էին . պզտիկէն մինչև մեծը՝ մարդ
մը չէին մեռցուցեր , հապա զանոնք
իրենց հետը տանելով՝ ճամբանին
3 գացեր էին ։ Ու երբոր Դաւիթ ու
իր մարդիկները քաղաքը հասան ,
ահա անիկայ կրակով այրուած էր .
ու իրենց կնիկները , տղաքները ու
աղջիկները գերի առնուած էին ։
4 Ուստի Դաւիթ ու իր հետը եղող
ժողովուրդը ձայներնին վերցուցին
ու լացին , մինչև որ անոնց վրայ
5 ուժ չմնաց լալու ։ Եւ Դաւիթին
Բ երկու կնիկները՝ Յեզրայելացի Ա-
քինոամն ու Կարմելացի Նաբաղին
կնիկը Աբիգեան ալ գերի առնուած
6 էին ։ Եւ Դաւիթ մեծ տագնապի
մէջ էր . Գ քանզի ժողովուրդը զա-
նիկայ քարկոծել կ'ուզէր . որով-
հետև բոլոր ժողովուրդէն ամէն
մէկուն սիրտը կը կսկծար իր տղո-
ցը ու աղջիկներուն համար . Դ բայց
Դաւիթ իր Տէր Աստուծովը զօրա-
7 ցաւ ։ Ե Եւ Դաւիթ՝ Աքիմելէքի
որդւոյն Աբիաթար քահանային
ըսաւ . Եփուտը մօտեցուր ինծի .
ու Աբիաթար եփուտը Դաւիթին
8 մօտեցուց ։ Զ Եւ Դաւիթ Տէրոջը
հարցուց ու ըսաւ . Աս գունդին
ետևէն իյնա՞մ . անոնց կը հաս-
նի՞մ . ու Տէրը ըսաւ անոր . Ետևէն
իյնէ . քանզի անշուշտ պիտի
հասնիս , ու ամէն բանը պիտի ա-
զատես ։
9 Եւ Դաւիթ՝ ինքը ու իր հետը
եղող վեց հարիւր մարդիկները գա-
ցին , ու մինչև Բոսոր հեղեղատը
եկան . ու ետ մնացողները հոն կայ-
10 նեցան ։ Եւ Դաւիթ չորս հարիւր
մարդով Է ետևէն հալածեց . ( Իսա-
կայն երկու հարիւր մարդիկը շատ
յոգնած ըլլալնուն համար՝ Բոսոր
հեղեղատին ասդին կողմը մնացին ,
11 ու չկրցան անցնիլ ։ ) Ու դաշ-
տին մէջ Եգիպտացի մարդ մը գը-
տան , և զանիկայ Դաւիթին բե-
րին . ու անոր հաց տուին , ու կե-
րաւ , ու անոր ջուր խմցուցին .
12 Եւ անոր քիչ մը չոր թուզ՝ ու
երկու ողկոյզ չամիչ տուին , որ
Ը կերաւ ու ոգին վրան եկաւ . քան-
զի իրեք օր ու իրեք գիշեր հաց չէր
13 կերած ու ջուր չէր խմած ։ Եւ
Դաւիթ անոր ըսաւ . Դուն որո՞ւն
մարդն ես , ու ուրկէ՞ց ես ։ Եւ
անիկայ ըսաւ . Ես Եգիպտացի
պատանի մըն եմ , Ամաղեկացի
մարդու մը ծառայ . ու հիմա իրեք
օր է որ՝ հիւանդ ըլլալուս համար ,
14 իմ տէրս զիս հոս թողուց . Մենք
Թ Քերեթի հարաւային կողմը՝ Յու-
դայի կողմերը՝ ու Ժ Քաղեբի հարա-
ւային կողմերը յարձակեցանք , ու
15 Սիկելակը կրակով այրեցինք ։ Եւ
Դաւիթ անոր ըսաւ . Զիս ան
գունդին կրնա՞ս իջեցընել ։ Ու ա-
նիկայ ըսաւ . Դուն ինծի Աստու-
ծով երդում ըրէ որ զիս պիտի
չմեռցընես , ու զիս իմ տիրոջս
ձեռքը պիտի չտաս , ես ալ քեզ
ան գունդին կ'իջեցընեմ ։
16 Եւ զանիկայ հոն իջեցուց , ու ա-
հա անոնք բոլոր գետնին երեսին
վրայ ցրուած էին . ԺԱ կ'ուտէին ու
կը խմէին , և Փղշտացւոց երկրէն ու
Յուդայի երկրէն առած ան բոլոր
մեծ աւարին համար ուրախութիւն
17 կ'ընէին ։ Եւ Դաւիթ † արշալոյ-
սէն մինչև հետևեալ օրուան իրի-
կունը" զանոնք զարկաւ , ու ա-
նոնցմէ մարդ չազատեցաւ , բայց
միայն չորս հարիւր երիտասարդներ՝
որոնք ուղտերու վրայ հեծան ու
18 փախան ։ Եւ Դաւիթ՝ Ամաղե-
կացւոց առած բոլոր բաները ազա-
տեց . ու Դաւիթ իր երկու կնիկ-
19 ներն ալ ազատեց ։ Եւ իրենց մէկ
բանը պակաս չէր պզտիկէն մինչև
մեծը , թէ տղայ , թէ աղջիկ , և
թէ աւար՝ ինչ որ անոնք առեր
տարեր էին . ԺԲ Դաւիթ ամէնն ալ
20 ետ բերաւ ։ Ու Դաւիթ բոլոր
ոչխարները ու արջառները առաւ ,
և զանոնք իրենց հօտերուն առջևէն
կը տանէին , ու կ'ըսէին . Դաւի-
թին աւարը ասիկայ է ։
21 Եւ Դաւիթ Իան երկու հարիւր
մարդիկներուն եկաւ , որոնք շատ
յոգնած ըլլալնուն համար չէին
կրցեր Դաւիթին ետևէն երթալ ,
ու զանոնք Բոսոր հեղեղատը նստե-
ցուցեր էր . և անոնք ելան Դաւի-
թը ու անոր հետ եղող ժողովուր-
դը դիմաւորելու . ու Դաւիթ երբ-
որ ժողովուրդին մօտեցաւ , ա-
22 նոնց ԺԳ ողջութիւնը հարցուց ։ Եւ
Դաւիթին հետը գացող մարդիկ-
ներէն ԺԴ բոլոր չար ու անզգամ մար-

Ա Եչբ · և
** Տես Գլ · ԺԵ · 7 ։ ԻԷ · 8 ։

Բ Գլ · ԻԵ · 42 · 43 ։ բ Թագ · բ · 2 ։

Գ Ել · ԺԷ · 4 ։

Դ Սաղ · ԽԲ · 5 ։ Ծզ · 3 · 4 · 11 ։ Ամբ · Գ · 17 · 18 ։

Ե Գլ · ԻԳ · 6 · 9 ։

Զ Գլ · ԻԳ · 2 · 4 ։

Է Հմր 21 ։

Ն · Ք · Ղ · Ք · Տիր 1056

Ը Դատ · ԺԵ · 19 ։ Գլ · ԺԴ · 27 ։

Թ Հմր 16 ։ բ Թագ · Ը · 18 ։ գ Թագ · Ա · 38 · 44 ։ Եզեկ · ԻԶ · 16 ։ Սոփ · Բ · 5 ։

Ժ Յես · ԺԴ · 13 ։ ԺԵ · 13 ։

ԺԱ Թես · Ե · 3 ։

† Կամ՝ հետևեալ օրուան արշալոյսէն մինչև իրիկունը

ԺԲ Հմր 8 ։

Ի Հմր 10 ։

ԺԳ Դատ · ԺԸ · 15 ։

ԺԴ Օր · ԺԳ · 13 ։ Դատ · ԺԹ · 22 ։

Ն․ Ք․ ԳՔ․ իրր 1056

․ դիկները պատասխան տուին ու
ըսին․ Ասոնք մեր հետը չգալնուն
համար, մենք ալ անոնց մեր ազա-
տած աւարէն չենք տար․ ամէն
մարդ միայն իր կնիկը ու տղաքները
23 առնէ՝ ու երթայ ։ Բայց Դաւիթ
անոնց ըսաւ․ Այդպէս մի՛ ընէք՝
եղբայրներս․ որովհետև Տէրը մեզի
տուաւ ասիկայ, և ինքը մեզ պա-
հեց, ու մեր վրայ եկող գունդը մեր
24 ձեռքը մատնեց․ Եւ աս բանիս
մէջ ո՞վ ձեզի մտիկ կ'ընէ․ քանզի
ᶜկարասիներուն քովը նստողներուն
բաժինը՝ պատերազմի գացողներուն
բաժինին հետ հաւասար պիտի ըլ-
լայ․ հաւասարապէս պիտի բաժ-
25 նեն ։ Եւ ան օրէն 'ի վեր ասիկայ
Իսրայէլի մէջ կանոն ու օրէնք
դրաւ, որ կը կենայ մինչև աս օրս ։
26 Եւ Դաւիթ Սիկելակ եկաւ, ու
ան աւարէն Յուդայի ծերոց՝ իր
բարեկամներուն խրկեց՝ ըսելով․
Ահա ձեզի՝ Տէրոջը թշնամիներուն
27 աւարէն * ընծայ կը խրկեմ․ Այսինքն՝
Բեթելի մէջ եղողներուն, ᵈՀարա-
ւային Ռամովթի մէջ եղողներուն,
28 ᵉՅաթիրի մէջ եղողներուն, ᶠԱրոե-
րի մէջ եղողներուն, Սեփամովթի
մէջ եղողներուն, ᵍԵսթեմովի մէջ
29 եղողներուն, Ռաքալի մէջ եղող-
ներուն, ʰՅերամելացւոց քաղաք-
ներուն մէջ եղողներուն, ⁱԿենե-
ցւոց քաղաքներուն մէջ եղողնե-
30 րուն, ʲՀորմայի մէջ եղողներուն,
Քովրասանի մէջ եղողներուն, Ա-
31 թաքի մէջ եղողներուն, ᵏՔեբրոնի
մէջ եղողներուն․ և ան ամէն տե-
ղերը՝ ուր որ Դաւիթ իր մարդիկ-
ներովը պտըտեր էր ։

## ԳԼ․ ԼԱ

1 Սաւուղ իր զօրքը կորսնցընելով, ու իր որդիքը մեռցուած ըլլալով, ինքը ու իր կապարճակիրը ինքզինքնին կը մեռցընեն ։ 7 Փղշտացիք Իսրայէլացիներէն թողուած քաղաքներուն մէջ կը բնակին․ 8 և Սաւուղին ու անոր որդւոցը մեռած մարմինները գտնելով՝ իրենց յաղթութեանը վրայ կ'ուրախանան ։ 11 Գաղաադու Յաբիսի բնակիչները գիշերով կ'երթան մարմինները կ'առնեն, ու Յաբիսի մէջ կ'այրեն, և անոնց ոսկորները սուգով կը թաղեն ։

1 Ու ᵃՓղշտացիք Իսրայէլի հետ պա-
տերազմ կ'ընէին․ և Իսրայէլի
մարդիկները՝ Փղշտացւոց առջևէն
փախան, ու ᵇԳեղբուէ լերանը
2 վրայ †վիրաւորուած ինկան ։ Եւ
Փղշտացիք Սաւուղին ու անոր որ-
դւոցը ետևէն հասան, ու Փղշտա-
ցիք ᶜՍաւուղին որդիքը Յովնաթա-
նը, Աբինադաբը ու Մեղքիսաւէն
3 զարկին ։ Եւ ᵈպատերազմը Սա-
ւուղին վրայ սաստկացաւ, ու ա-
ղեղնաւորները զանիկայ գտան․ ու
աղեղնաւորներէն ‡սաստիկ վիրա-
4 ւորուեցաւ ։ ᵉԵւ Սաւուղ իր
կապարճակիրին ըսաւ․ Սուրդ քա-
շէ, ու անով զիս խոցէ․ չըլլայ
որ աս ᶠանթլփատները գան ու զիս
խոցեն, և զիս ծաղր ընեն․ բայց
կապարճակիրը չուզեց․ ᵍքանզի
շատ վախցաւ ։ Եւ Սաւուղ սուրը
առաւ, ու ʰանոր վրայ ինկաւ ։
5 Եւ անոր կապարճակիրը Սաւուղին
մեռնիլը տեսնելով՝ ան ալ իր սու-
րին վրայ ինկաւ, ու անոր հետ մե-
6 ռաւ ։ Եւ Սաւուղ ու անոր իրեք
որդիքը, ու կապարճակիրը և անոր
բոլոր մարդիկները նոյն օրը մէկ-
տեղ մեռան ։
7 Ու հովտին անդիի կողմը՝ և
Յորդանանու անդիի կողմը եղող
Իսրայէլի մարդիկները՝ Իսրայէլա-
ցւոց փախչիլը ու Սաւուղին և անոր
որդւոցը մեռնիլը տեսնելով, քա-
ղաքները թողուցին ու փախան․ և
Փղշտացիք եկան, ու անոնց մէջը
բնակեցան ։
8 Եւ հետևեալ օրը Փղշտացիք ե-
կան, որ մեռելները մերկացընեն․
ու Սաւուղը և անոր իրեք որդիները
Գեղբուէ լերան վրայ ինկած գտան ։
9 Ան ատենը անոր գլուխը կտրեցին,
ու անոր վրայի զէնքերը հանեցին․ և
Փղշտացւոց երկրին չորս կողմը՝ ի-
րենց կուռքերուն ու ժողո-
վուրդին՝ Իրենց կուռքերուն աւետիսը
10 տալու համար մարդ խրկեցին ։ ʲԵւ
անոր զէնքերը ᵏԱստարովթին տու-
նը դրին, ու ˡանոր մարմինը ᵐԲեթ-
սանի պարիսպէն կախեցին ։
11 ⁿԵւ Գաղաադու Յաբիսի բնա-
կիչները երբոր լսեցին ինչ որ Փը-
ղըշտացիք Սաւուղին ըրած էին,
12 ᵒԲոլոր ուժի տէր մարդիկները ոտք
ելան, ու բոլոր գիշերը գացին,
ու Բեթսանի պարիսպէն Սաւուղին
մարմինը ու անոր որդւոցը մարմին-
ները առին, և զանոնք Յաբիս բե-
13 րին, ու ᵖհոն զանոնք այրեցին․ Եւ
անոնց ոսկորները առին, ու ʳՅա-
բիսի մէջ ‖ծառին տակը թաղեցին,
ու եօթը օր ծոմ պահեցին ։

ᶜ Տեառ Թուա․ 27։ Յես․ իբ․ 8։
* Եբր․ օրհնութիւն․ Ծն․ ԼԳ․ 11։ Գլ․ իե․ 27։
ᵈ Յես․ ժթ․ 8։
ᵉ Յես․ ժե․ 48։
ᶠ Յես․ ժգ․ 16։
ᵍ Յես․ ժե․ 50։
ʰ Գլ․ իէ․ 10։
ⁱ Դատ․ ա․ 16։
ʲ Դատ․ ա․ 17։
ᵏ Յես․ ժդ․ 13։ բ Թագ․ բ․ 1։

ᵃ Ա Մն․ ժ․ 1—12։
ᵇ Գլ․ իը․ 4։
† Կամ՝ ըս- պաննուած

ᶜ Գլ․ ժդ․ 49։ Ա Մն․ ը․ 33։
ᵈ Բ Թագ․ ա․ 6, Ա։
‡ Կամ՝ խիստ վախցաւ։
ᵉ Դատ․ թ․ 54։
ᶠ Գլ․ ժդ․ 6։ ժէ․ 26։
ᵍ Բ Թագ․ ա․ 14։
ʰ Բ Թագ․ ա․ 10։

ⁱ Բ Թագ․ ա․ 20։
ʲ Գլ․ իա․ 9։
ᵏ Դատ․ բ․ 13։
ˡ Բ Թագ․ իա․ 12։
ᵐ Յես․ ժէ․ 11։ Դատ․ ա․ 27։
ⁿ Գլ․ ժա․ 3, 9, 11։
ᵒ Տես Գլ․ ժա․ 1—11։ Բ Թագ․ բ․ 4—7։
ᵖ Ա Մն․ ժգ․ 14։ Երեմ․ լդ․ 5։ Ամով․ զ․ 10։
ʳ Բ Թագ․ բ․ 4, 5։ իա․ 12, 13, 14։
‖ Կամ՝ մոշային
ˢ Ծն․ ծ․ 10։

# *ԵՐԿՐՈՐԴ ԳԻՐՔ ԹԱԳԱՒՈՐԱՑ

Ն. Ք. Գ. Ք. 1056

*Կամ ԵՐԿՐՈՐԴ ԳԻՐՔ ՍԱՄՈՒԷԼԻ

## ԳԼՈՒԽ Ա

1 Ամաղեկացի մը Իսրայէլացւոց յաղթուելուն լուրը Դաւիթին կը բերէ, ու ըսելով թէ ինքը մեռցուցեր է Սաւուղը, ինքն ալ կը մեռցուի ։ 17 Դաւիթ՝ Սաւուղին ու Յովնաթանին համար կ'ողբայ երգով մը ։

1 Եւ Սաւուղին մեռնելէն ետքը՝ երբ-
որ Դաւիթ ա Ամաղէկացիները
զարնելէն դարձեր էր, ու երկու օր
2 Սիկելակի մէջ նստեր էր, Երրորդ
օրը՝ ահա՛ բանակէն Սաւուղին քովէն
բ մէկը եկաւ, գ որուն հանդերձները
պատռած էին, ու գլխուն վրայ հող
կար. և անիկայ Դաւիթին քովը
գալով՝ գետինը ինկաւ ու երկրպա-
3 գութիւն ըրաւ ։ Եւ Դաւիթ ը-
սաւ անոր. Ո՞ւսկից կու գաս ։ Ու
անիկայ ըսաւ անոր. Ես Իսրայէլի
4 բանակէն փախայ ։ Եւ Դաւիթ
ըսաւ անոր. դ Բանը ի՞նչպէս եղաւ,
պատմէ՛ ինծի ։ Ու անիկայ ըսաւ.
Ժողովուրդը պատերազմէն փա-
խաւ, ու ժողովուրդէն շատ մարդիկ
ինկան մեռան. նաև Սաւուղը ու
անոր որդին Յովնաթանը մեռան ։
5 Եւ Դաւիթ իրեն լուր բերող պա-
տանիին ըսաւ. Սաւուղին ու անոր
որդւոյն Յովնաթանին մեռնիլը
6 ո՞ւսկից գիտես ։ Ու անոր լուր բե-
րող պատանին ըսաւ. Դիպուածով
ե Գեղբուէ լեռան վրայ գտնուեցայ,
և ահա զ Սաւուղ իր նիզակին վրայ
կռթըներ էր, ու կառքերը և ձիա-
ւորները անոր վրայ կը հասնէին ։
7 Ան ատենը ետևը դառնալով՝ զիս
տեսաւ, ու զիս կանչեց. ես ալ
8 ըսի. Ահա՛ հոս եմ ։ Եւ անիկայ
ինծի ըսաւ. Դուն ո՞վ ես ։ Ես
ալ անոր ըսի թէ՝ Ամաղէկացի եմ ։
9 Ու անիկայ ինծի ըսաւ. Կ'աղաչեմ
իմ վրաս ելի՛ր՝ ու զիս մեռցո՛ւր.
քանզի վրաս թմրութիւն մը եկաւ,
10 բայց տակաւին հոգիս վրաս է ։ Ան
ատենը անոր վրայ ելայ, ու է զա-
նիկայ մեռցուցի. քանզի ես հաս-
կըցայ որ անիկայ իյնալէն ետքը
պիտի չապրի. ու անոր գլխուն
վրայի թագը՝ և անոր թևին վրայ
եղած † ապարանջանը առի, ու
11 զանոնք հոս իմ տիրոջս բերի ։ Ան
ատենը Դաւիթ իր հանդերձները
բռնեց ը պատռեց, նոյնպէս ալ ա-
նոր հետը եղող բոլոր մարդիկները ։
12 Եւ անոնք Սաւուղին համար, ու
անոր որդւոյն Յովնաթանին հա-
մար, և Տէրոջը ժողովուրդին հա-
մար, ու Իսրայէլի տանը համար
սուգ բռնեցին ու լացին, ու մինչև
իրիկուն ծոմ բռնեցին անոնց սրով
իյնալուն համար ։
13 Եւ Դաւիթ իրեն լուր բերող
պատանիին ըսաւ. Դուն ո՞ւր տե-
ղացի ես ։ Ու անիկայ ըսաւ. Ես
մէկ պանդուխտ Ամաղէկացիի մը
14 զաւակ եմ ։ Եւ Դաւիթ անոր ը-
սաւ. ը Ի՞նչպէս թ չվախցար ձեռքդ
երկընցընելու՝ ու Տէրոջը օծեալը
15 մեռցընելու ։ Եւ ժ Դաւիթ մանչե-
րուն մէկը կանչեց, ու ըսաւ.
Մօտեցի՛ր՝ ասիկայ մեռցո՛ւր. և
16 զանիկայ զարկաւ, որ մեռաւ ։ Ու
Դաւիթ անոր ըսաւ. ի Քու ա-
րիւնդ քու գլխուդ ըլլայ. լ քանզի
քու բերանդ քեզի համար վկայու-
թիւն տուաւ, ըսելով. Տէրոջը
օծեալը ես մեռցուցի ։
17 Եւ Դաւիթ՝ Սաւուղին վրայ ու
անոր որդւոյն Յովնաթանին վրայ
18 աս ողբը ըսաւ. Ու պատուիրեց որ
‡ Աղեղը Յուդայի որդւոցը սորվե-
ցընեն. ահա անիկայ § Ուղղու-
թեան գրքին մէջը գրուած է ։
19 Ո՜վ Իսրայէլին փառքը, քու
բարձր տեղերուդ վրայ վիրաւո-
րուած ինկաւ. կ զօրաւորները ի՞նչ-
պէս ինկան ։
20 հ Գեթի մէջ մի՛ պատմէք. Աս-
կաղոնի ճամբաներուն մէջը աւե-
տիս մի՛ տաք. չըլլայ որ ձ Փղշտա-
ցւոց աղջիկները ուրախանան. չըլ-
լայ որ ղ անթլփատներուն աղջիկնե-
րը ցնծութիւն ընեն ։
21 ճ Ո՜վ Գեղբուէի լեռները, մ ձեր
վրայ ո՛չ ցօղ գայ և ո՛չ անձրև, ու ե-
րախայրիքի ընծաներու անդաստաններ
չըլլան. քանզի զօրաւորներուն
վահանը հոն ձգուեցաւ. Սաւուղին
վահանը իբրև թէ իւղով չէր օ-
ծուած ։
22 Վիրաւորուածներուն արիւնէն
ու զօրաւորներուն ճարպէն ն Յով-
նաթանին աղեղը ետ չքաշուեցաւ,
ու Սաւուղին սուրը պարապ չդար-
ձաւ ։

ա Թագ. Լ. 17, 26 ։
բ Գլ. Դ. 10 ։ գ Ա Թագ. Դ. 12 ։
դ Ա Թագ. Դ. 16 ։
ե Ա Թագ. ԼԱ. 1 ։ զ Տե՛ս Ա Թագ. ԼԱ. 2, 3, 4 ։
է Դատ. Թ. 54 ։
† Կամ՝ շղթան
ը Գլ. Գ. 31 ։ ԺԳ. 31 ։

Ն. Ք. Գ. Ք. 1056

ը Թու. ԺԲ. 8 ։
թ Ա Թագ. ԼԱ. 4 ։
ժ Ա Թագ. ԻԴ. 7 ։ ԻԶ. 9 ։ Սաղ. ՃԵ. 15 ։
ի Գլ. Դ. 10. 12 ։
լ Ա Թագ. ԻԶ. 9 ։ Գ Թագ. Բ. 32, 33, 37 ։
ծ Հմր 10 ։ Ղու. ԺԹ. 22 ։
‡ Եբ՝ աս երգը ։
§ Յես. Ժ. 13 ։
կ Հմր 27 ։
հ Ա Թագ. ԼԱ. 9 ։ Միք. Ա. 10 ։ Տես Դատ. ԺԶ. 23 ։
ձ Տե՛ս Ել. ԺԵ. 20 ։ Դատ. ԺԱ. 34 ։ Ա Թագ. ԺԸ. 6 ։
ղ Ա Թագ. ԼԱ. 4 ։
ճ Ա Թագ. ԼԱ. 1 ։
մ Տե՛ս Դատ. Ե. 23 ։ Յոբ. Գ. 3, 4 ։ Երեմ. Ի. 14 ։
ն Ա Թագ. Ժ. 1 ։
ն Ա Թագ. ԺԸ. 4 ։

Ն. Ք. ԶՔ.
1056

23 Սաւուղ ու Յովնաթան՝ իրենց
կենդանութեան ատենը շատ սիրե-
լի ու հաճելի ըլլալով, իրենց մա-
հուան ժամանակն ալ իրարմէ չը-
զատուեցան. արծիւներէն աւելի
թեթեւաշարժ ու ＊առիւծներէն
աւելի զօրաւոր էին։

＊Դատ. ԺԴ. 18։

24 Ով Իսրայէլի աղջիկները, լա-
ցէք Սաւուղին համար, որ ձեզի
վայելուչ կարմիրներ կը հագցնէր,
ու ձեր հանդերձներուն վրայ ոսկիէ
զարդեր կը դնէր։
25 Պատերազմին մէջը զօրաւորները
ի՜նչպէս ինկան. ով Յովնաթան՝
քու բարձր տեղերուդ վրայ մեռ-
ցուեցար։
26 Քեզի համար շատ կը ցաւիմ, ով
եղբայր իմ Յովնաթան. դուն ինծի
խիստ սիրելի էիր. Նքու սէրդ ին-
ծի զարմանալի էր. կանանց սէրէն
աւելի էր։
27 ᵑ Զօրաւորները ի՜նչպէս ինկան,
ու պատերազմի զէնքերը կորսուե-
ցան։

Ն Ա Թագ. ԺՐ. 1, 3։ ԺԹ. 2։ Ի. 17, 41։ Իգ. 16։
ᵑ Հմր 19։

ԳԼ. Բ

1 Դաւիթ՝ Աստուծոյ առաջնորդութեամբը իր զօրքերովը Քեբրոն կ'երթայ, ու հոն Յուդայի վրայ թագաւոր կ'ըլլայ։ 5 Գաղաադու Յաբիսի բնակիչները կը գովէ, անոնց՝ Սաւուղին վրայ ցուցուցած սիրոյն համար։ 8 Աբեններ Իսրայէլի թագաւոր կը դնէ Յերուսթէն։ 15 Աբեններին տասուերկու մարդոցը, ու Յովաբին տասուերկու մարդոցը մէջ եղած մահառիթ կռիւը։ 18 Ասայէլը կը մեռցուի։ 26 Աբեններին առաջարկութիւնովը՝ Յովաբ ժողովուրդը ետ կը դարձընէ։ 32 Ասայէլին թաղումը։

ա Դատ. Ա. 1։ Ա Թագ. Իգ. 2, 4, 9։ Լ. 7, 8։

1 Եւ ասկէ ետեւ Դաւիթ ᵃ Տէրոջը
հարցուց ու ըսաւ. Յուդայի
քաղաքներուն մէկը ելլե՞մ։ Եւ
Տէրը անոր ըսաւ. Ելի՛ր։ Ու
Դաւիթ ըսաւ. Ո՞ւր ելլեմ։ Եւ
2 Տէրը ըսաւ. ᵇ Քեբրոն։ Եւ Դա-
ւիթ իր ᶜ երկու կնիկները՝ Յովնիա
Յեզրայելացի Աքինոամը ու Կար-
մելացի Նաբաղին կնիկը Աբիգեան
3 իր հետը տանելով՝ հոն ելաւ։ Եւ
Դաւիթ՝ ᵈ իր հետը եղող մարդիկ-
ներն ալ՝ ամէն մէկը իր ընտանի-
քովը տարաւ. ու Քեբրոնի քա-
4 ղաքներուն մէջը բնակեցան։ ᵉ Եւ
Յուդայի մարդիկները եկան, ու
հոն Դաւիթը՝ Յուդայի տանը վրայ
թագաւոր օծեցին։ Եւ Դաւիթին
պատմեցին ու ըսին թէ՝ ᶠ Գաղա-
ադու Յաբիսի բնակիչները Սաւուղը
5 թաղեցին։ Եւ Դաւիթ Գաղաա-
դու Յաբիսի բնակիչներուն պատ-
գամաւորներ խրկեց, ու անոնց ը-
սաւ. ᵍ Դուք Տէրոջմէն օրհնեա՛լ ըլ-
լաք, որ ձեր տիրոջը Սաւուղին՝ աս
ողորմութիւնը ըրիք, ու զանիկայ
6 թաղեցիք։ Եւ հիմա ʰ Տէրը ձեզի
ողորմութիւն ու ճշմարտութիւն
ընէ. ու աս բանը ընելնուդ համար,

բ Ա Թագ. Լ. 31։ Հմր 11։ Գլ. Ե. 1, 3։ Գ Թագ. Բ. 11։
գ Ա Թագ. Լ. 5։
դ Ա Թագ. Իէ. 2, 3։ Լ. 1։ Ա Մն. ԺԲ. 1։
ԻԲԲ 1055
ե Հմր 11։ Գլ. Ե. 5։
զ Ա Թագ. ԼԱ. 11, 13։
է Հռութ. Բ. 20։ Գ. 10։ Սաղ. ՃԺԵ. 15։
ը Բ Տիմ. Ա. 16, 18։

ես ալ ձեզի՝ աս աղէկութեան փո-
7 խարէնը պիտի հատուցանեմ։ Եւ
հիմա ձեր ձեռքը ուժովնայ, ու զօ-
րաւոր կտրիճներ եղէք. քանզի ձեր
տէրը Սաւուղը մեռաւ, և Յուդայի
տունը զիս իրենց վրայ թագաւոր
օծեցին։

Ն. Ք. ԶՔ.
ԻԲԲ 1055

8 Իսկ Սաւուղին զօրավարը Ները-
բեան Աբենները՝ Սաւուղին որդին
ᶤ Յեբուսթէն առաւ, ու զանիկայ
9 Մանայիմը անցուց, Եւ զանիկայ՝
Գաղաադու վրայ, Ասուրիի վրայ,
Յեզրայելի վրայ, Եփրեմի վրայ,
Բենիամինի վրայ, ու բոլոր Իսրա-
10 յէլին վրայ թագաւոր ըրաւ։ Երբ-
որ Սաւուղին որդին Յեբուսթէն՝
Իսրայէլի վրայ թագաւոր եղաւ,
քառսուն տարեկան էր, ու երկու
տարի թագաւորութիւն ըրաւ.
միայն Յուդայի տունը Դաւիթին
11 ＊հպատակ եղաւ։ Եւ Յուդայի
տանը վրայ Քեբրոնի մէջ ᶨ Դաւի-
թին թագաւորութիւն ըրած ժա-
մանակը՝ եօթը տարի ու վեց ամիս
էր։

Ը Ա Թագ. ԺԴ. 50։
Ժ Ա Մն. Ը. 33։ Թ. 39։
1055
＊ Եբր. ե-տեւէն
Է Գլ. Ե. 5։ Գ Թագ. Բ. 11։

12 Ու Ներեան Աբենները և Սաւու-
ղին որդւոյն Յեբուսթէին ծառա-
ները՝ Մանայիմէն ˡ Գաբաւոնը ե-
13 լան։ Եւ Շարուհեայի որդին
Յովաբը ու Դաւիթին ծառաները
Քեբրոնէն ելան, ու ᵐ Գաբաւոնի
աւազանին քովը անոնց հանդիպե-
ցան. և ասոնք աւազանին մէկ
կողմը՝ ու անոնք աւազանին մէ-
14 կալ կողմը նստան։ Եւ Աբեններ՝
Յովաբին ըսաւ. Թող կտրիճները
ելլեն՝ ու մեր առջեւը խաղան։ Եւ
15 Յովաբ ըսաւ. Թող ելլեն։ Ուստի
անոնք թուով ելան, ու Բենիամի-
նէն ու Սաւուղին որդւոյն Յեբուս-
թէին կողմէն տասուերկու մարդ, և
Դաւիթին ծառաներէն տասուեր-
16 կու մարդ անցան. Ու ամէն մէկը
իր ընկերին գլխէն բռնեց, և իր
սուրը իր ընկերին կողը խոթեց, ու
մէկտեղ ինկան. ու ան տեղին ա-
նունը † Քեղկաթ Ասուրիմ ըսուե-
ցաւ, որ Գաբաւոնի մէջ է։
17 Եւ ան օրը խիստ սաստիկ պա-
տերազմ եղաւ. ու Աբեններ Իս-
րայէլի մարդիկներուն հետ՝ Դաւի-
թին ծառաներուն առջեւը յաղ-
18 թուեցաւ։ Եւ ⁿ Շարուհեայի իրեք
որդիքը՝ Յովաբ, Աբեսսա ու Ասա-
յէլ հոն էին. ու Ասայէլ դաշտի
ᵒ այծեամի մը պէս ᵖ ոտքով թեթեւ
19 էր։ Եւ Ասայէլ՝ Աբեններին ետեւէն
ինկաւ, ու Աբեններին ետեւէն աջ
կամ ձախ կողմը չխոտորեցաւ։
20 Եւ Աբեններ ետեւը դարձաւ՝ ու ը-
սաւ. Ա՛սայէլ՝ դո՞ւն ես։ Ու ա-
21 նիկայ ըսաւ. Ես եմ։ Եւ Աբեն-
ներ անոր ըսաւ. Քու աջ կամ

Լ Յես. ԺԸ. 25։
ԻԲԲ 1053
Ի Երեմ. ԽԱ. 12։
† Այ՝ սուրերուն արտը։
Ծ Ա Մն. Բ. 16։
Կ Սաղ. ԺԸ. 33։ Երգ. Բ. 17։ Ը. 14։
Հ Ա Մն. ԺԲ. 8։

Ն. Ք. ՌԾԳ. 1053

ձախ կողմը խոտորէ, ու կտրիճ-
ներուն մէկը բռնէ, ու անոր զէն-
քերը քեզի առ. բայց Ասայէլ ա-
22 նոր ետեւէն դառնալ չուզեց։ Եւ
Աբեններ նորէն մէյ մըն ալ Ասայէ-
լին ըսաւ. Ետեւէս դարձիր. քեզ
ինչո՞ւ համար գետինը զարնեմ. ան
ատենը ի՞նչպէս երեսս վերցնեմ
23 քու եղբօրդ Յովաբին առջեւ։ Բայց
անիկայ՝ անոր ետեւէն դառնալ չու-
զեց։ Ու Աբեններ նիզակին ետեւի
ծայրովը Ծ*անակուշտէն զարկաւ
զանիկայ, ու նիզակը անոր կռնա-
կէն ելաւ. և հոն ինկաւ ու նոյն
տեղը մեռաւ. և ով որ Ասայէլին
ինկած ու մեռած տեղը կու գար,
24 կանգ կ'առնէր։ Եւ Յովաբ ու
Աբեսսա Աբեններին ետեւէն ինկած
կը հալածէին զանիկայ. ու երբոր
անոնք Գիբայի դիմացը՝ Գաբաւոնի
անապատին ճամբան եղող Ամմայի
բլուրը եկան, արեւը մտաւ։
25 Եւ Բենիամինի որդիքը Աբեն-
ներին ետեւէն ժողվուեցան, գունդ
մը եղան, ու մէկ բլուրի մը գլու-
26 խը կայնեցան։ Եւ Աբեններ՝ Յո-
վաբին պոռալով ըսաւ. Միթէ
սուրը անդադա՞ր պիտի ուտէ. չէ՞ս
գիտեր որ ասոր վերջը դառն կ'ըլ-
լայ. մինչեւ ե՞րբ ժողովուրդին պի-
տի չհրամայես, որ իրենց եղբայր-
27 ները հալածելէն ետ դառնան։ Ու
Յովաբ ըսաւ. Կենդանի է Աս-
տուած, ղթէ որ դուն զրուցած
չըլլայիր, ժողովուրդին ամէնն ալ
առտուընէ 'ի վեր՝ իր եղբայրները
հալածելէն ետ պիտի դառնար։
28 Ան ատենը Յովաբ փող հնչե-
ցուց. ու բոլոր ժողովուրդը կանգ
առաւ, ու ալ Իսրայէլին ետեւէն
չինկան, ու մէյ մըն ալ պատերազմ
29 չըրին։ Եւ Աբեններ ու անոր մար-
դիկները ան բոլոր գիշերը դաշտին
մէջէն երթալով՝ Յորդանանէն ան-
ցան, ու բոլոր Բեթրոնը քալելով՝
30 Մանայիմը եկան։ Եւ Յովաբ Ա-
բեններէն դարձաւ, ու բոլոր ժո-
ղովուրդը ժողվեց. և Դաւիթին
ծառաներէն տասնուինը մարդ ու
31 Ասայէլը կը պակսէին. Բայց Դա-
ւիթին ծառաները՝ Բենիամինէն ու
Աբեններին մարդիկներէն իրեք հա-
րիւր վաթսուն մարդ զարկին, ո-
32 րոնք մեռան։ Եւ Ասայէլը վերցու-
ցին, ու զանիկայ Բեթլեհեմի մէջ
իր հօրը գերեզմանը թաղեցին։ Ու
Յովաբ և անոր բոլոր մարդիկները
բոլոր գիշերը քալեցին, ու արշա-
լուսին Քեբրոն հասան։

Ծ Գլ. գ. 27։ դ. 6։ ի. 10։
* Կամ՝ փորէն

ղ Հմր. 14։ Առակ. ժէ. 14։

ԳԼ. Գ

1 Դաւիթ օրէ օր կը զօրանայ։ 2 Քեբրոնի մէջ անոր վեց որդիք կը ծնանին։ 6 Աբեններ՝ Յեբուսթէին կը բարկանայ։ 12 ու Դաւիթին կողմը կը դառնայ։ 13 Դաւիթ իր Մեղքող կնիկը իրեն դարձընել կը պահանջէ Աբեններէն։ 17 Աբեններ՝ Դաւիթին վրայով Իսրայէլին հետ կը խօսի. և Դաւիթ խնճոյքի կը հրաւիրէ զանիկայ, ու ետքը կ'արձակէ խաղաղութեամբ։ 22 Յովաբ՝ պատերազմէն դառնալով, Թագաւորին կը բարկանայ, ու Աբենները կը մեռցնէ։ 28 Դաւիթ Յովաբը կը նզովէ, 31 ու Աբեններին համար սուգ կ'ընէ։

Ն. Ք. ՌԾԳ. 1053

1 Եւ Սաւուղին տանը ու Դաւիթին
տանը մէջ երկայն պատերազմ
եղաւ. ու Դաւիթ երթալով կը
զօրանար, բայց Սաւուղին տունը
երթալով կը տկարանար։
2 Եւ Քեբրոնի մէջ ա Դաւիթին որ-
դիներ ծնան. ու անոր անդրանիկը՝
բ Յեզրայելացի Աքինոամէն ծնած
3 Ամնոնն էր, Եւ անոր երկրորդը՝
Կարմելացի Նաբաղին կնիկէն Աբի-
գեայէն ծնած գ Քիլաբն էր, ու եր-
րորդը՝ դ Գեսուրի թագաւորին
Թողմիին աղջկանը Մաաքային որ-
4 դին Աբիսողոմն էր, Եւ չորրորդը՝
ե Ագգիթին որդին Ադոնիան էր,
ու հինգերորդը՝ Աբիտալին որդին
5 Սափատիան էր, Ու վեցերորդը՝
Դաւիթին կնիկէն Եգղայէն ծնած՝
Յեթրամն էր. Քեբրոնի մէջ Դա-
ւիթին ասոնք ծնան։
6 Եւ Սաւուղին տանը ու Դաւի-
թին տանը մէջ քանի որ պատե-
րազմ կար, Աբենները Սաւուղին
7 տանը թիկունքն էր։ Եւ Սաւուղ
մէկ հարճ մը ունէր՝ որուն անունը
զ Ռեսփա էր, որ Այիային աղջիկն
էր։ Ու Յեբուսթէ Աբեններին ը-
սաւ. է իմ հօրս հարճին ինչո՞ւ մօ-
8 տեցար։ Եւ Աբեններ Յեբուսթէին
խօսքերուն համար խիստ բարկա-
ցաւ, ու ըսաւ. Միթէ ես շան
գլո՞ւխ եմ որ Յուդայի դէմ՝ քու
հօրդ Սաւուղին տանը, անոր եղ-
բայրներուն ու բարեկամներուն
այսօր ողորմութիւն ըրի, ու քեզ
Դաւիթին ձեռքը չմատնեցի, և
դուն այսօր աս կնկանը համար իս
9 կը մեղադրես։ թ Աստուած Աբեննե-
րին այսպէս՝ ու ասկէ աւելի ընէ,
թէ որ Դաւիթին չընեմ ինչ որ
10 Տէրը անոր երդում ըրաւ. Այս-
ինքն թագաւորութիւնը Սաւուղին
տունէն վերցնեմ, ու Դաւիթին
աթոռը Իսրայէլի վրայ և Յուդայի
վրայ հաստատեմ՝ ժա Դանէն մինչեւ
11 Բերսաբէէ։ Ու Յեբուսթէ մէյ մըն
ալ չկրցաւ Աբեններին պատասխան
տալ, անկէ վախնալուն համար։
12 Եւ Աբեններ իր կողմանէ Դաւի-
թին պատգամաւորներ իրկեց ըսե-
լով. Աս երկիրը որո՞ւնն է. ու ը-
սաւ. Ինծի հետ դաշնակցութիւն
ըրէ, և ահա իմ ձեռքս քեզի հետ
պիտի ըլլայ՝ բոլոր Իսրայէլը քեզի
13 դարձնելու համար։ Ու անիկայ

ա Ա Մն. գ. 1—4։
բ Ա Թագ. իե. 43։
գ Ա Մն. գ. 1 Կամ՝ Դանիէլ։
դ Ա Թագ. իէ. 8։ Գլ. ժգ. 37։
ե Գ Թագ. ա. 5։
զ Գլ. իա. 8, 10։
է Գլ. ժզ. 21։
ը Բ Օր. իգ. 18։ Ա Թագ. իդ. 15։ Գլ. թ. 8։ ժզ. 9։
թ Հռութ. ա. 17։ Գ Թագ. ժթ. 2։
ժ Ա Թագ. ժե. 28։ ժզ. 1, 12։ իը. 17։ Ա Մն. ժբ. 23։
ժա Դատ. ի. 1։ Գլ. ժէ. 11։ Գ Թագ. դ. 25։

1048

Ն․ Ք․ ՂՖ․ 1048

Լ Ա Թագ․ ԺԸ․ 20։
Ի Ծն․ ԽԳ․ 3։

Ծ Ա Թագ․ ԺԸ․ 25, 27։
Իբր 1048

Կ Թագ․ ԻԵ․ 44։

Հ Գլ․ ԺԹ․ 16։

Յ Հմր 9։

Ղ ԱՄն․ ԺԲ 29։

Ճ Հմր 10, 12։

Մ Գ Թագ․ ԺԱ․ 37։

* Կամ՝ ասպատակներու վրայ յարձակելէն

ըսաւ․ Աղէկ, ես քեզի հետ դաշնակցութիւն կ'ընեմ, բայց քեզմէ
բան մը կը պահանջեմ, որ իմ երեսս տեսնելու եկած ատենդ՝ թէ
որ Սաւուղին աղջիկը ԼՄեղքողը ինծի չբերես, Իիմ երեսս չտեսնես․
14 Եւ Դաւիթ՝ Սաւուղին որդւոյն Յեբուսթէին դեսպաններ խրկեց՝ ըսելով․ Իմ կնիկս Մեղքողը ինծի
տուր, որն որ Ծ Փղշտացւոց հարիւր
15 անթլփատութիւններովը առի։ Ու
Յեբուսթէ Կորը խրկեց, ու զանիկայ անոր էրիկէն Կ Լայիսեան Փաղ
16 տիելէն առաւ։ Եւ անոր էրիկը
լալով մինչև Հ Բաւուրիմ անոր ետեւէն գնաց։ Ու Աբեններ անոր
ըսաւ․ Գնա՛ դարձիր․ ու անիկայ
դարձաւ։
17 Եւ Աբեններ Իսրայէլի ծերերուն
հետ խօսեցաւ ու ըսաւ․ Երէկ ու
միւսօր կ'ուզէիք որ Դաւիթ ձեր
18 վրայ թագաւոր ըլլայ․ Ուրեմն հիմա ըրէք․ Յ քանզի Տէրը Դաւիթին
համար խօսեցաւ ըսելով․ Իմ ժողովուրդս Իսրայէլը՝ Փղշտացւոց
ձեռքէն՝ ու անոր բոլոր թշնամիներուն ձեռքէն՝ իմ ծառայիս Դաւիթին ձեռքովը պիտի ազատեմ։
19 Եւ Աբեններ Ղ Նոյն խօսքերը ԻԲենիամինին ալ զրուցեց․ անկէ ետքը Աբեններ Քեբրոն գնաց, որ Իսրայէլի
ու Բենիամինի բոլոր տանը հաճոյ
երևցածը Դաւիթին ալ պատմէ։
20 Ու Աբեններ Քեբրոն եկաւ Դաւիթին, իր հետը քսան մարդ ունենալով։ Եւ Դաւիթ՝ Աբեններին
ու անոր հետ եղող մարդիկներուն
21 խնճոյք ըրաւ։ Ու Աբեններ Դաւիթին ըսաւ․ Ելլեմ երթամ, և
Ճ բոլոր Իսրայէլը իմ տիրոջս թագաւորին քովը ժողվեմ, որ քեզի
հետ դաշնակցութիւն ընեն․ ու
դուն սրտիդ ամէն ուզածին պէս
Մ թագաւորութիւն ընես։ Եւ Դաւիթ՝ Աբենները խրկեց, որ խաղաղութեամբ գնաց։
22 Եւ ահա Դաւիթին ծառաները
ու Յովաբը *ասպատակութենէ ետ
դարձան, ու իրենց հետը խիստ
շատ աւար բերին․ իսկ Աբեններ
Դաւիթին քովը Քեբրոնի մէջ չէր,
քանզի Դաւիթ զանիկայ խրկեր էր,
ու անիկայ խաղաղութեամբ գա
23 ցեր էր․ Ու երբոր Յովաբ և անոր
հետ եղող բոլոր զօրքը եկան, Յովաբին պատմեցին ու ըսին․ Ներեան Աբենները թագաւորին եկաւ․
ան ալ զանիկայ խրկեց, ու խաղա
24 ղութեամբ գնաց։ Ան ատենը Յովաբ՝ թագաւորին գնաց ու ըսաւ․
Ի՞նչ ըրիր․ ահա Աբենները քեզի
եկեր է․ ինչո՞ւ համար զանիկայ
թող տուեր ես, ու ան ալ գացեր

25 է․ Դուն †չե՞ս գիտեր՝ որ Ներեան
Աբենները քեզ խաբելու, Յ քու ելլելու ու մտնելու տեղդ հասկընալու,
ու քու ամէն գործքդ իմանալու հա
26 մար եկաւ։ Եւ Յովաբ Դաւիթին
քովէն ելաւ, ու Աբեններին ետեւէն
պատգամաւորներ խրկեց․ ու զանիկայ Սիրայի ջրհորէն ետ դարձուցին․ և Դաւիթ չէր գիտեր։
27 Ու երբոր Աբեններ Քեբրոն դարձաւ, Յովաբ Ն զանիկայ դրանը
ներսի դին քաշեց՝ անոր հետ ծածուկ խօսակցութիւն ընելու համար, ու զանիկայ հոն՝ իր եղբօրը
Շ Ասայէլին արեանը համար՝ Ո սնակուշտէն զարկաւ․ ու անիկայ մեռաւ։
28 Եւ անկէ ետև Դաւիթ լսեց, ու
ըսաւ․ Ես ու իմ թագաւորութիւնս՝ Ներեան Աբեններին արիւնէն յաւիտեան անպարտ ենք Տէրո
29 ջը առջեւը․ Չ Յովաբին գլխուն վըրայ, ու անոր հօրը բոլոր տանը
վրայ հասնի․ ու Յովաբին տունէն՝
Պ սերմնակաթ, բորոտ, ցուպի
կռթընող, սրով ինկող ու հա
30 ցի կարօտ պակաս չըլլայ։ Այսպէս Յովաբ ու անոր եղբայրը Աբեսսա՝ Աբենները մեռցուցին․
քանզի անիկայ՝ անոնց եղբայրը
Ջ Ասայէլը պատերազմի ժամանակ
Գաբաւոնի մէջ մեռցուցեր էր։
31 Եւ Դաւիթ Յովաբին ու անոր
հետ եղող բոլոր ժողովուրդին ըսաւ․ Ռ Հանդերձնիդ պատռեցէք,
ու Ս քուրձեր հագէք, և Աբեններին առջեւէն լացէ՛ք։ Ու Դաւիթ
թագաւորը դագաղին ետեւէն գը
32 նաց։ Եւ Աբենները Քեբրոնի մէջ
թաղեցին․ ու թագաւորը ձայնը
վերցուց՝ ու Աբեններին գերեզմանին վրայ լացաւ․ բոլոր ժողովուրդն ալ լացաւ։
33 Եւ թագաւորը Աբեններին համար ողբաց ու ըսաւ․
Միթէ Աբեններ ա՞յնպէս մեռաւ, ինչպէս որ Վանզգամ մարդ
մը կը մեռնի։
34 Քու ձեռքերդ կապուած չէին,
ու ոտքերդ կապանքի մէջ դրուած
չէին․ անօրէններուն առջեւը ինկողի մը պէս ինկար։
Ու բոլոր ժողովուրդը նորէն ա
35 նոր վրայ լացաւ։ Եւ քանի որ
ցորեկ էր, բոլոր ժողովուրդը եկաւ, Տ որ Դաւիթին հաց կերցընեն․ բայց Դաւիթ երդում ըրաւ
ու ըսաւ․ Ր Աստուած ինծի այսպէս՝ ու ասկէ աւելի ընէ, թէ որ
Ց արևը մտնելէն առաջ՝ հաց կամ
36 ուրիշ բան մը ճաշակեմ։ Եւ բոլոր ժողովուրդը ուշադրութիւն ըրաւ, ու աս բանը իրենց աչքին հա

Ն․ Ք․ ՂՖ․ Իբր 1048

† Եբր․ գիտես

Յ Ա Թագ․ ԻԹ․ 6։ Եա․ ԼԷ․ 28։

Ն Գ Թագ․ Բ․ 5։ Գլ․ Ի․ 9, 10։

Շ Գլ․ Բ․ 23։
Ո Գլ․ Դ․ 6։

Չ Գ Թագ․ Բ․ 32, 33։

Պ Ղև․ ԺԵ․ 2։

Ջ Գլ․ Բ․ 23։

Ռ Յես․ Է․ 6։ Գլ․ Ա․ 2, 11։
Ս Ծն․ ԼԷ․ 34։

Վ Գլ․ ԺԳ․ 12, 13։

Տ Գլ․ ԺԲ․ 17։ Երեմ․ ԺԶ․ 7։
Ր Հռութ․ Ա․ 17։
Ց Գլ․ Ա․ 12։

Ն. Ք. Ա.
իրր 1048

ճոյ երեւցաւ , ինչպէս որ թագաւո-
րին ամէն ըրածը բոլոր ժողովուր-
դին աչքերուն հաճոյ կ'երեւնար ։
37 Եւ այն օրը բոլոր ժողովուրդը ու
բոլոր Իսրայէլը հասկցաւ որ Նե-
րեան Աբեններին մեռցուիլը թա-
38 գաւորէն չէր ։ Եւ թագաւորը իր
ծառաներուն ըսաւ . Չէ՞ք գիտեր
որ այսօր Իսրայէլի մէջ մէկ մեծ
39 զօրավար մը ինկաւ . Ու ես այսօր
տկար եմ , թէպէտեւ թագաւոր օ-
ծուեցայ . ու այս մարդիկները՝
Շարուհեայի որդիքը ա ինծմէ խիստ
են . բ Տէրը հատուցանէ չարու-
թիւն ընողին՝ անոր չարութեանը
համեմատ ։

ա Գլ. ժթ. 7 ։
բ Տես Գլ. ժթ. 13 ։ Գ Թագ. բ. 5, 6, 33, 34 ։ Սաղ. իը. 4 ։ կբ. 12 ։ բ Տիմ. դ. 14 ։

## ԳԼ. Դ

1 Իսրայէլացիք Աբեններին մեռնիլը լսելով՝ կը զարհուրին ։ 2 Բաանա ու Ռեքաբ՝ Յեբուսթէն կը սպաննեն , ու անոր գլուխը Քեբրոն կը տանին ։ 9 Դաւիթ՝ կը հրամայէ որ զանոնք մեռցնեն , ու Յեբուսթէին գլուխը թաղեն ։

1 Եւ Սաւուղին որդին Յեբուսթէն
երբոր Աբեններին Քեբրոնի մէջ
մեռնիլը լսեց , ա ձեռքերը թուլ-
ցան , ու բոլոր Իսրայէլը բ տագնա-
2 պեցաւ ։ Եւ Սաւուղին որդին եր-
կու գնդապետ ունէր , մէկուն ա-
նունը Բաանա՝ ու մէկալին անունը
Ռեքաբ էր . ասոնք Բենիամինի ցե-
ղէն Բերովթացի Ռեմոնին որդիքն
էին . (քանզի գ Բերովթ ալ Բենի-
3 ամինեանց ցեղը կը սեպուէր , Ու
Բերովթացիները դ Գեթթայիմ
փախան , և հոն մինչև աս օրս պան-
4 դուխտի պէս բնակեցան ։) Ու
Սաւուղին որդին ե Յովնաթանը
ոտքերը կաղ տղայ մը ունէր , որ
երբոր Սաւուղին ու Յովնաթանին
մահուան լուրը զ Յեզրայելէն եկաւ ,
անիկայ հինգ տարեկան էր . և ա-
նոր դայեակը զանիկայ առաւ ու
փախաւ . ու երբոր փախչելու կը
փութար , տղան ինկաւ կաղ եղաւ .
և անոր անունը է Մեմփիբոսթէ էր ։
5 Ու Բերովթացի Ռեմոնին որդիքը
Ռեքաբ ու Բաանա գացին , ու ցո-
րեկուան տաք ատենը Յեբուսթէին
տունը մտան , և անիկայ կէսօրուան
6 ատենը պառկեր կը քնանար . Ու
անոնք մինչև տանը մէջտեղը մտան ,
իբր թէ ցորեն պիտի առնէին . և
զանիկայ ը անակուշտէն զարկին , ու
Ռեքաբ և անոր եղբայրը Բաանա
7 անկէ փախան ։ Աս կերպով տունը
մտան . ու երբոր անիկայ ներքին
սենեակը իր անկողինին մէջ կը քը-
նանար , զանիկայ զարկին մեռցու-
ցին , և անոր գլուխը կտրեցին , ու
գլուխը առնելով՝ բոլոր գիշերը
8 դաշտին ճամբովը գացին ։ Եւ Յե-
բուսթէին գլուխը Քեբրոն տարին

ա Եզր. դ. 4 ։ Ես. ժգ. 7 ։
բ Մատ. բ. 3 ։
գ Յես. ժը. 25 ։
դ Նեեմ. ժա. 33 ։
ե Գլ. թ. 3 ։
զ Ա Թագ. իթ. 1, 11 ։
է Ա Մն. ը. 34 ։ թ. 40 Մերիպաաղ ։
ը Գլ. բ. 23 ։

Դաւիթին , ու թագաւորին ըսին .
Ահա քու թշնամիիդ՝ թ քու կեանքդ
փնտռող Սաւուղին որդւոյն Յե-
բուսթէին գլուխը . և Տէրը Սա-
ւուղէն ու անոր սերունդէն այսօր
վրէժխնդրութիւն տուաւ մեր թա-
9 գաւոր տիրոջը ։ Եւ Դաւիթ՝ Բե-
րովթացի Ռեմոնի որդւոցը՝ Ռե-
քաբին ու անոր եղբօրը Բաանային
պատասխան տուաւ , ու անոնց
ըսաւ . ժ Իմ հոգիս ամէն նեղու-
թենէ ազատող Տէրը կենդանի է ,
10 Որ ի ան որ ինծի պատմեց ու ըսաւ
թէ՝ Սաւուղը մեռաւ , կարծելով
թէ աւետիս տուող մը պիտի երե-
նայ ինծի , զանիկայ բռնեցի , ու
Սիկելակի մէջ զանիկայ մեռցուցի ,
և անոր տուած աւետիսին վարձքը
11 աս եղաւ . Ո՛րչափ աւելի նոյն վարձ-
քը կը վայլէ այն չար մարդիկներուն ,
որոնք արդար մարդ մը իր տանը
մէջ՝ իր անկողինին վրայ մեռցու-
ցին . և հիմա լ անոր արիւնը ան-
շուշտ ձեր ձեռքէն պիտի պահան-
ջեմ , ու ձեզ երկրիս վրայէն պիտի
12 վերցընեմ ։ Ան ատենը Դաւիթ խ իր
մանչերուն հրամայեց , ու զանոնք
մեռցուցին . և անոնց ձեռքերը ու
ոտքերը կտրեցին , ու Քեբրոնի
աւազանին վրայ կախեցին ։ Իսկ
Յեբուսթէին գլուխը առին , ու
Քեբրոնի մէջ ծ Աբեններին գերեզ-
մանը թաղեցին ։

Ն. Ք. Ա.
իրր 1048

թ Ա Թագ. ժթ. 2, 10, 11 ։ իգ. 15 ։ իե. 29 ։
ժ Ծն. խը. 16 ։ Գ Թագ. ա. 29 ։ Սաղ. լա. 7 ։
ի Գլ. ա. 2, 4, 15 ։
լ Ծն. թ. 5, 6 ։
խ Գլ. ա. 15 ։
ծ Գլ. գ. 32 ։

## ԳԼ. Ե

1 Իսրայէլի ցեղերը Քեբրոն կու գան՝ Դաւիթը բոլոր Իսրայէլի վրայ թագաւոր օծելու ։ 4 Դաւիթին տարիքը ։ 6 Դաւիթ Յեբուսացիներէն Սիոնը առնելով՝ հոն կը բնակի ։ 11 Քիրամ՝ թագաւորը Դաւիթին դեսպաններ կը խրկէ ։ 13 Երուսաղէմի մէջ տասնումէկ տղաք կը ծնանին Դաւիթին ։ 17 Դաւիթ՝ Աստուծոյ առաջնորդութեամբը Բաաղփարասինի մէջ , 22 ու նաև թթենիներուն առջին մօտ Փղշտացիները կը ջարդէ ։

1 Եւ ա Իսրայէլին բոլոր ցեղերը Քեբ-
րոն եկան Դաւիթին , ու անոր
ըսին . Ահա բ մենք քու ոսկորդ ու
2 քու մարմինդ ենք ։ Եւ * ասկէ ա-
ռաջ" ալ երբոր Սաւուղ մեր վրայ
թագաւոր էր , Իսրայէլը գ դուրս
հանողը ու ներս բերողը դուն էիր .
և Տէրը քեզի ըսաւ . դ Իմ ժողո-
վուրդս Իսրայէլը դուն հովուես ,
ու Իսրայէլի վրայ իշխան ըլլաս ։
3 ե Եւ Իսրայէլի բոլոր ծերերը Քեբրոն
եկան թագաւորին . Ու Դաւիթ
թագաւորը Քեբրոնի մէջ զ Տէրոջը
առջեւը անոնց հետ դաշնակցու-
թիւն ըրաւ . ու անոնք Դաւիթը
Իսրայէլի վրայ թագաւոր օծեցին ։
4 է Դաւիթ երսուն տարեկան
էր՝ երբոր թագաւոր եղաւ , ը ու
քառասուն տարի թագաւորութիւն
5 ըրաւ ։ Քեբրոնի մէջ Յուդայի

ա Ա Մն. ժա. 1 ։ ժբ. 23 ։
բ Ծն. իթ. 14 ։
* Եբր. երէկ ու մէկալ օր
գ Ա Թագ. ժը. 13 ։
դ Ա Թագ. ժզ. 1, 12 ։ Սաղ. հը. 71 ։ Տես Գլ. է. 7 ։
ե Ա Մն. ժա. 3 ։
զ Դ Թագ. ժա. 17 ։
է Դատ. ժա. 11 ։ Ա Թագ. իգ. 18 ։
ը Ա Մն. իգ. 31 ։ իթ. 27 ։

Ն. ք. զք. իբր 1048

բ Գւ. բ. 11; ա Մն. գ. 4;

դ Դատ. ա. 21; ե Յես. ժե. 63; Դատ. ա. 8; ժթ. 11, 12;

զ Հմր 9; գ Թագ. բ. 10; ը. 1;

ե ամն. ժա. 6—9;

ը Հմր 7;

իբր 1043

է գ Թագ. ե. 2; ամն. ժգ. 1;

ը բ Օր. ժէ. 17; ա Մն. գ. 9; ժգ. 3;

թ ամն. գ. 5; ժգ. 4;

ժ ամն. ժա. 16; ժգ. 8;

1047

ժա Գւ. իգ. 14; ժբ Յես. ժե. 8; Ես. ժէ. 5;

ժգ Գւ. ը. 1; ա Թագ. իգ. 2, 4; Լ. Տ;

ժդ Ես. իը. 21;

վրայ եօթը տարի ու վեց ամիս
թագաւորութիւն ըրաւ, ու Երու-
սաղէմի մէջ բոլոր Իսրայէլի ու
Յուդայի վրայ երեսունըերեք տարի
թագաւորութիւն ըրաւ ։
6 Եւ թագաւորը իր մարդիկներովը
դ Երուսաղէմ գնաց՝ Եան երկիրը
բնակող Յեբուսացիներուն վրայ .
ու Դաւիթին խօսեցան ըսելով .
Թէ որ կոյրերը ու կաղերը չվերցը-
նես, հոս պիտի չմտնես . կարծելով
թէ՝ Դաւիթ չկրնար հոն մտնել ։
7 Բայց Դաւիթ առաւ Սիօնին բեր-
դը, (Նոր Դաւիթին քաղաքը կը
8 կոչուի ։) Եւ Դաւիթ այն օրը ը-
սաւ . Ո՛վ որ Յեբուսացիները զար-
նէ, ու ջրանցքը հասնելով Դա-
ւիթին ատելի եղող կաղերը ու
կոյրերը վերցնէ, ե անիկայ զօրավար
պիտի ըլլայ . անոր համար կ'ըսեն .
9 Կոյրը ու կաղը տունը չմտնէ ։ Եւ
Դաւիթ այն բերդին մէջը նստաւ,
ու զանիկայ զ Դաւիթին քաղաքը
անուանեց . և Դաւիթ անոր չորս
կողմը Մելօնէն դէպ 'ի ներս՝ շէնքեր
10 շինեց ։ Ու Դաւիթ երթալով կը
մեծնար, ու զօրաց Տէր Աստուածը
անոր հետն էր ։
11 Եւ է Տիւրոսի թագաւորը Քի-
րամ՝ Դաւիթին դեսպաններ խրը-
կեց, նաև եղևնափայտեր ու հիւսեր
ու որմնադիրներ՝ որոնք Դաւիթին
12 տուն շինեցին ։ Այն ատենը Դա-
ւիթ իմացաւ որ Տէրը զինքը Իս-
րայէլի վրայ թագաւոր հաստա-
տեց, ու իր ժողովուրդին Իսրայէ-
լին համար՝ իր թագաւորութիւնը
13 բարձրացուց ։ Եւ ը Դաւիթ՝ Քեբ-
րոնէն գալէն ետքը՝ Երուսաղէմէն
ուրիշ հարճեր ու կնիկներ ալ ա-
ռաւ . ու Դաւիթին ուրիշ տղաք-
14 ներ ու աղջիկներ ալ ծնան ։ Ու
թ Երուսաղէմի մէջ անոր ծնած տղո-
ցը անունները ասոնք են . Սամուա,
15 Սովբաբ, Նաթան, Սողոմոն, Յե-
բաար, Եղիսուա, Նափեկ, Յա-
16 փիէ, Եղիսամա, Եղիադա ու Ե-
ղիփաղէտ ։
17 ժ Եւ Փղշտացիք Դաւիթին Իսրա-
յէլի վրայ թագաւոր օծուիլը լսե-
լով, բոլոր Փղշտացիք ոտք ելան որ
Դաւիթը փնտռեն . երբոր Դաւիթ
18 այս բանը լսեց, ժա բերդը իջաւ ։ Ու
Փղշտացիք եկան՝ և ժբ Ռափայնոց
19 հովիտին մէջը տարածուեցան ։ Ու
Դաւիթ ժգ Տէրոջը հարցուց ու ը-
սաւ . Փղշտացւոց դէմը ելլե՞մ, զա-
նոնք իմ ձեռքս պիտի մատնե՞ս ։
Եւ Տէրը Դաւիթին ըսաւ . Ելի՛ր .
քանզի Փղշտացիները անշուշտ քու
20 ձեռքդ պիտի մատնեմ ։ Այն ատե-
նը Դաւիթ ժդ Բաաղփարասինը գը-
նաց . ու Դաւիթ զանոնք հոն զար-
կաւ, ու ըսաւ . Տէրը իմ թշնամի-
ներս իմ ձեռքովս պատառեց, ինչ-
պէս որ ջուրերը թումբերը կը պա-
տառեն . անոր համար այն տեղւոյն
անունը *Բաաղփարասին ըսուե-
21 ցաւ ։ Եւ Փղշտացիք հոն թողուցին
իրենց կուռքերը . ու Դաւիթ և իր
մարդիկները ժե զանոնք առին ։
22 ժզ Ու Փղշտացիք նորէն մէյմըն ալ
ելան, և Ռափայնոց հովիտին մէջը
23 տարածուեցան ։ Ու երբոր ժէ Դա-
ւիթ Տէրոջը հարցուց, անոր ըսաւ .
Չելլես . հապա դէպ 'ի անոնց ետևի
կողմը դառնալով՝ † թթենիներուն
24 կողմէն անոնց վրայ երթաս . Ու
երբոր թթենիներուն գլուխը ժը քա-
լուածքի մը ձայն լսես, այն ատենը
շարժիս . քանզի այն ատենը ժթ Տէրը
քու առջևէդ պիտի ելլէ Փղշտա-
25 ցւոց բանակը զարնելու համար ։ Եւ
Դաւիթ այնպէս ըրաւ, ինչպէս որ
Տէրը իրեն հրամայեց . ու ի Գաբա-
յէն մինչև իա Գազէրը Փղշտացիները
զարկաւ ։

Ն. ք. զք. 1047

* Յն՝ տէր խըրամատից ։

ժե բ Օր. է. 5, 25; ա Մն. ժդ. 12;

ժզ ամն. ժդ. 13;

ժէ Հմր 19;

† Կամ՝ տանձենիներուն

ժը դ Թագ. է. 6;

ժթ Դատ. դ. 14;

ի ամն. ժդ. 16 կ'ըսուի Գաբաւոն ։

իա Յես. ժզ. 10;

## ԳԼ. Զ.

1 Դաւիթ տապանակը նոր սայլի մը վրայ դնե-
լով՝ Կարիաթարիմէն կը բերէ ։ 6 Ոզային հա-
րուածը ։ 9 Աստուած Աբդեդոմը կ'օրհնէ՝
տապանակին համար ։ 12 Դաւիթ՝ տապանա-
կը պատարագներով Սիօն բերած ատենը՝ ա-
նոր առջևը կը խաղայ . իսկ Մեղքող ասոր
համար կը քամահրէ զանիկայ ։ 17 Դաւիթ
վրանի մը մէջ կը դնէ տապանակը մեծ ուրա-
խութեամբ ։ 20 Մեղքող՝ Դաւիթին հո-
գևոր ուրախութիւնը անարգելուն համար՝
անզաւակ կը մնայ ։

1 Եւ Դաւիթ նորէն Իսրայէլի բոլոր
ընտրուած մարդիկները ժող-
վեց, որոնք երեսուն հազար հոգի էին ։
2 Ու ա Դաւիթ իր հետը եղող բոլոր
ժողովուրդով ելաւ՝ և բ Յուդայի
Բաաղը գնաց, որ անկէ Աստուծոյ
տապանակը վեր հանէ, որ անոր
վրայ գ քերովբէից մէջ նստող զօ-
րութեանց Տէրոջը անունը կոչուած
3 է ։ Եւ Աստուծոյ տապանակը դ մէկ
նոր սայլի մը վրայ դրին, ու զանի-
կայ բլրացի Աբինադաբին տունէն
վերցուցին . ու Աբինադաբին որ-
դիքը՝ Ոզա ու Աքիով՝ այն նոր սայ-
4 լը կը վարէին ։ Եւ զանիկայ Աս-
տուծոյ տապանակին հետ ե բլրացի
Աբինադաբին տունէն հանեցին . ու
Աքիով տապանակին առջևէն կ'եր-
5 թար ։ Եւ Դաւիթ ու Իսրայէլի
բոլոր տունը՝ մայր փայտէ շինուած
ամէն տեսակ նուագարաններով, քը-
նարներով, տաւիղներով, թըմ-
բուկներով, դափերով ու ծնծղա-
ներով՝ Տէրոջը առջևը կը խաղային ։
6 Ու երբոր զ Նաքոնին կալը եկան,
Ոզա իր ձեռքը Աստուծոյ տապա-
նակին երկընցուց, ու զանիկայ
բռնեց, քանզի եզները զանիկայ ծը-
7 ռեր էին ։ Եւ Տէրոջը բարկու-

1042

ա ամն. ժգ. 5, 6;

բ Յես. ժե. 9, 60;

գ Թագ. դ. 4; Սաղ. ձ. 1;

դ Տհն Թու. է. 9; ա Թագ. զ. 7;

ե ա Թագ. է. 1;

զ ամն. ժգ. 9;

է Տհն Թու. դ. 15;

Ն․ Ք․ ԾՆ․
1042

ը ա Թագ․ Գ․ 19։

* Եբ՝ Ոզայի հարուածը, Լուս՝ Ոզայի խրամատութիւնը։

ի Սաղ․ ՃԺԹ․ 120։ Տե՛ս Ղու․ Ե․ 8, 9։

ժ ա Մն․ ԺԳ․ 13։

ի ա Մն․ ԺԳ․ 14։

լ Ծն․ Լ․ 27։ Լթ․ 5։

խ ա Մն․ ԺԵ․ 25

ծ Թու․ Դ․ 15։ Յես․ Գ․ 3։ ա Մն․ ԺԵ․ 2, 15։

կ Տե՛ս Գ Թագ․ Ը․ 5։ ա Մն․ ԺԵ․ 26։

հ Տե՛ս Ել․ ԺԵ․ 20։ Սաղ․ Լ․ 11։

ձ ա Թագ․ Բ․ 18։ ա Մն․ ԺԵ․ 27։

ղ ա Մն․ ԺԵ․ 28։

ճ ա Մն․ ԺԵ․ 29։

մ ա Մն․ ԺԶ․ 1։

յ ա Մն․ ԺԵ․ 1։ Սաղ․ ՃԼԲ․ 8։

ն Գ Թագ․ Ը․ 5, 62, 63։

շ Գ Թագ․ Ը․ 55։ ա Մն․ ԺԶ․ 2։

ո ա Մն․ ԺԶ․ 3։

չ Սաղ․ Լ․ ին վերնագիրը։

Իբր 1042

թիւնը բորբոքեցաւ Ոզային դէմ,
ու ըԱստուած զանիկայ հոն ա-
յանցանքին համար զարկաւ․ և նոյն
տեղը Աստուծոյ տապանակին քո-
8 վը մեռաւ։ Ու Դաւիթ տրտմե-
ցաւ․ քանզի Տէրը հարուածով Ո-
զան զարկաւ․ ու ան տեղին անու-
նը՝ մինչև աս օրս *Փարէս ոզա ը-
9 սուեցաւ։ Եւ իԴաւիթ ան օրը
Տէրոջմէն վախցաւ, ու ըսաւ․
Տէրոջը տապանակը ի՞նչպէս ինծի
10 պիտի մտնէ։ Եւ Դաւիթ Տէրոջը
տապանակը իր քովը՝ Դաւիթին
քաղաքը չուզեց տանիլ․ ու Դա-
ւիթ զանիկայ ժԳեթացի Աբդեդո-
11 մին տունը խոտորցուց։ իԵւ Տէ-
րոջը տապանակը՝ Գեթացի Աբդե-
դոմին տունը իրեք ամիս մնաց․ ու
Տէրը լԱբդեդոմը ու անոր բոլոր
տունը օրհնեց։
12 Եւ Դաւիթ թագաւորին պատ-
մեցին ու ըսին․ Աստուծոյ տապա-
նակին համար՝ Տէրը Աբդեդոմին
տունը ու անոր ամէն ունեցածը
օրհնեց։ խԵւ Դաւիթ գնաց, ու
Աստուծոյ տապանակը Աբդեդոմին
տունէն ուրախութեամբ Դաւի-
13 թին քաղաքը հանեց։ Ու երբոր
ծՏէրոջը տապանակը վերցնողնե-
րը վեց քայլ առաջ գացին, կար-
ջառներ ու պարարտ զուարակներ
14 զոհեց։ Եւ Դաւիթ հՏէրոջը առ-
ջևը բոլոր ուժովը կը խաղար, ու
Դաւիթ ձքթանէ եփուտ հագեր
15 էր։ ղԵւ Դաւիթ ու Իսրայէ-
լի բոլոր տունը՝ Տէրոջը տապա-
նակը ուրախութեամբ ու փողե-
16 րու ձայներով կը տանէին։ Ու
ճերբոր Տէրոջը տապանակը Դա-
ւիթին քաղաքը եկաւ, Սաւուղին
աղջիկը Մեղքող պատուհանէն նա-
յելով՝ տեսաւ որ Դաւիթ թագա-
ւորը Տէրոջը առջևը ցատկռտելով
կը խաղայ, ու զանիկայ իր սրտին
17 մէջը անարգեց։ Եւ մՏէրոջը տա-
պանակը բերին, ու զանիկայ յիր
տեղը դրին ան վրանին մէջը, որն
որ Դաւիթ անոր համար կանգներ
էր․ և Դաւիթ Տէրոջը առջևը
նողջակէզներ ու խաղաղութեան
18 զոհեր մատուց։ Ու Դաւիթ՝ երբ-
որ ողջակէզները ու խաղաղութեան
զոհերը մատուցանելը լմնցուց,
զօրաց Տէրոջը անունովը շժողո-
19 վուրդը օրհնեց։ ոԵւ Իսրայէլին
բոլոր բազմութեանը՝ էրիկ մարդէն
մինչև կնիկ մարդը, բոլոր ժողո-
վուրդին ամէն մէկուն՝ մէկ նկա-
նակ, կտոր մը միս ու կարկանդակ
մը բաշխեց․ ու բոլոր ժողովուրդը
ամէն մէկը իր տունը գնաց։
20 չԵւ Դաւիթ անկէ դարձաւ իր
տունը օրհնելու համար, ու Սա-
ւուղին աղջիկը Մեղքող՝ Դաւիթը
դիմաւորելու ելաւ, ու ըսաւ․ Իս-
րայէլի թագաւորը այսօր ի՛նչ փա-
ռաւոր էր, պոր անիկայ այսօր իր
ծառաներուն աղախիններուն առ-
ջևը ինքզինքը մերկացուց, ինչպէս
որ ջսրիկաներէն մէկը ինքզինքը կը
21 մերկացընէ։ Եւ Դաւիթ Մեղքո-
ղին ըսաւ․ Ես ան Տէրոջը առջևը
խաղացի, ռոր զիս քու հօրմէդ ու
անոր բոլոր տունէն աւելի ընտրեց,
ու զիս Տէրոջը ժողովուրդին Իսրա-
յէլին վրայ իշխան դրաւ․ այո՛, ես
ան Տէրոջը առջևը կը խաղամ։
22 Նաև զիս ասկէ ալ աւելի անարգ
երևցընելով՝ իմ աչքերուս առջևը
նուաստ պիտի ըլլամ․ իսկ ան քու
ըսած աղախիններուդ առջևը պի-
23 տի փառաւորուիմ։ Եւ Սաւուղին
աղջիկը Մեղքող մինչև իր մա-
հուան օրը զաւակ չծնաւ։

## ԳԼ․ Է

1 Նաթան նախ կը հաճի Դաւիթին առաջար-
կութեանը՝ որ Տէրոջը տուն մը շինէ․ 4 ետքը
Աստուծոյ խօսքովը կ'արգիլէ զանիկայ, 12 և
կը խոստանայ թէ անոր սերունդին բարու-
թիւններ ու օրհնութիւններ պիտի տրուի։
18 Դաւիթին աղօթքը ու շնորհակալութիւ-
նը։

1 Ու աերբոր թագաւորը իր տունը
նստաւ, ու Տէրը զանիկայ իր
բոլորտիքը եղող ամէն թշնամինե-
2 րէն ազատելով հանգստացուց, թա-
գաւորը Նաթան մարգարէին ը-
սաւ․ Ահա ես բեղևնափայտէ շի-
նուած տան մը մէջ կը բնակիմ,
գու Աստուծոյ տապանակը դվրա-
3 նի մէջ կեցեր է։ Եւ Նաթան ը-
սաւ թագաւորին․ գնա՝ եբոլոր
սրտիդ մէջը եղածը ըրէ․ քանզի
Տէրը քու հետդ է։
4 Ու նոյն գիշերը Տէրոջը խօսքը
5 զՆաթանին եղաւ՝ ըսելով․ Գնա՛,
իմ ծառայիս Դաւիթին ըսէ․ Տէ-
րը այսպէս կ'ըսէ․ զԴո՞ւն ինծի
բնակելու համար տուն պիտի շի-
6 նես․ Որովհետև էԻսրայէլի որդիքը
Եգիպտոսէն հանած օրէս մինչև աս
օրս՝ տան մէջ չբնակեցայ․ այլ
ըվրաններով ու խորաններով պը-
7 տըտեցայ։ թԻսրայէլի բոլոր որ-
դւոցը հետ որչափ տեղ որ պտըտե-
ցայ, մի՞թէ բան մը խօսեցայ Իս-
րայէլի †իշխաններուն մէկուն հետ,
որոնց ժիմ ժողովուրդս Իսրայէլը
հովուելու հրաման տուեր էի, ու
ըսի՞ թէ՝ ինչո՞ւ համար ինծի եղև-
8 նափայտէ տուն մը չշինեցիք։ Եւ
հիմա իմ ծառայիս Դաւիթին ա-
սանկ ըսես․ Զօրաց Տէրը այսպէս
կ'ըսէ․ իԵս քեզ փարախէն՝ ոչ-
խարներուն ետևէն առի, որ իմ

Ն․ Ք․ ԾՆ․
Իբր 1042

պ Հմր 14, 16։ Տե՛ս ա Թագ․ ԺԹ․ 24։

ջ Դատ․ Թ․ 4։

ռ ա Թագ․ ԺԳ․ 14։ ԺԵ․ 28։

1042

ա ա Մն․ ԺԷ․ 1, ևն։

բ Գլ․ Ե․ 11։

գ Տե՛ս Գոր․ Է․ 46։

դ Ել․ ԻԶ․ 1։ Խ․ 21։

ե Գ Թագ․ Ը․ 17, 18։ ա Մն․ ԻԲ․ 7։ ԻԸ․ 2։

զ Տե՛ս Գ Թագ․ Ե․ 3։ Ը․ 19։ ա Մն․ ԻԲ․ 8։ ԻԸ․ 3։

է Գ Թագ․ Ը․ 16։

ը Ել․ Խ․ 18, 19, 34։

թ Ղև․ ԻԶ․ 11, 12։ Բ Օր․ ԻԳ․ 14։

† Կամ՝ դատաւորներուն․ տե՛ս ա Մն․ ԺԷ, 6։

ժ Գլ․ Ե․ 2։ Սաղ․ ՀԸ․ 71, 72։ Մատ․ Բ․ 6։ Գոր․ Ի․ 28։

ի ա Թագ․ ԺԶ․ 11, 12։ Սաղ․ ՀԸ․ 70։

Ն. Ք. Ա. Ք.
Իրր 1042

ա Թագ. Ժբ. 14։ Գլ. Ե. 10։ Բ. 6, 14։
ե ա Թագ. Լա. 6։ Սաղ. ՁԹ. 23։
ծ Ծն. Ժբ. 2։
է Սաղ. Խդ. 2, Յ. Տ։ Երեմ. Իգ. 6։ Ամով. Թ. 15։
հ Սաղ. ՁԹ. 22։
յ Դատ. Բ. 14, 15, 16։ ա Թագ. Ժբ. 9, 11։ Սաղ. Ճզ. 42։
ն Հմր 1։
շ Եղ. ա. 21։ Հմր 27։ գ Թագ. Ժա. 38։
մ գ Թագ. Բ. 1։
յ բ Օր. Լա. 16։ գ Թագ. ա. 21։ Գոր. Ժգ. 36։
ն գ Թագ. Ը. 20։ Սաղ. Ճլբ. 11։
շ գ Թագ. Ե. 5։ գ. 12։ Ը. 19։ ա. Մն. Իբ. 10։ Իը. 6։
ո Հմր 16։ Սաղ. ՁԹ. 4, 29, 36, 37։
չ Սաղ. ՁԹ. 26, 27, Եբր. ա. 5։
պ Սաղ. ՁԹ. 30, 31, 32, 33։
* Եբր. չվերցնեմ,
ջ ա Թագ. Ժե. 23, 28։ Ժզ. 14։ դ Թագ. Ժա. 13, 34։
ռ Հմր 13։ Սաղ. ՁԹ. 36, 37։ Յոհ. Ժբ. 34։
ս Ծն. Լբ. 10։
վ Հմր 12, 13։
տ Եսա. Ծե. 8։
ր Ծն. Ժը. 19։ Սաղ. Ճլթ. 1։
ց ա Մն. Ժգ. 25։ բ Մն. Բ. 5։ Սաղ. Խը. 1։ Ձզ. 10։ ՂՂ. 4։ Ճլե. 5։ Ճխե. 3։ Երեմ. Ժ. 6։

Իսրայէլ ժողովուրդիս վրայ ա-
9 ռաջնորդ ըլլաս. Եւ նուր որ կ'եր-
թայիր, քու հետդ էի. Եւ քու
առջեւէդ բոլոր թշնամիներդ կոտ-
րեցի. ու երկրիս վրայ եղող մե-
ծերուն անուանը պէս քու անունդ
10 մեծցուցի ։ Եւ իմ ժողովուրդիս
Իսրայէլին ալ մէկ տեղ մը պիտի
որոշեմ, ու զանիկայ պիտի տըն-
կեմ. ու իր տեղը պիտի բնակի,
ալ պիտի չշարժի. Եւ անիրաւու-
թեան որդիքը առջինին պէս՝ մէյ-
մըն ալ՝ պիտի չնեղեն զանիկայ,
11 Ինչպէս որ իմ ժողովուրդիս Իս-
րայէլին վրայ դատաւորներ դրած
օրէս ի վեր եղաւ. ու Դքեզ քու
ամէն թշնամիներէդ պիտի հան-
գըստացընեմ ։ Եւ Տէրը քեզի
կ'իմացընէ, որ Տէրը քեզի տուն
12 պիտի շինէ ։ Երբոր քու օրերդ
լեցուին, ու դուն քու հայրե-
րուդ հետ քնանաս, քեզմէ ետ-
քը՝ քու երանքէդ ելլող զաւա-
կըդ պիտի բարձրացընեմ, ու ա-
նոր թագաւորութիւնը պիտի հաս-
13 տատեմ ։ Անիկայ իմ անուանս
տուն պիտի շինէ. ու անոր թա-
գաւորութեան աթոռը յաւիտեան
14 պիտի կանգնեմ. Ես անոր հայր
պիտի ըլլամ, ու անիկայ ինծի որդի
պիտի ըլլայ. Թէ որ անիկայ անի-
րաւութիւն ընէ, ես զանիկայ մար-
դոց գաւազանովը ու մարդոց որ-
դիներուն հարուածներովը պիտի
15 պատժեմ. Բայց իմ ողորմու-
թիւնս անկէ պիտի * չվերցընեմ,
Ինչպէս որ Սաւուղէն վերցուցի, ու
զանիկայ քու առջեւէդ վռընտեցի ։
16 Եւ քու տունդ ու քու թագաւո-
րութիւնդ քու առջեւդ յաւիտեան
ապահով պիտի ըլլան. քու ա-
թոռդ յաւիտեան հաստատ պիտի
17 մնայ ։ Եւ Նաթան աս բոլոր խօս-
քերը ու աս բոլոր տեսիլքը մի ըստ
միոջէ Դաւիթին զրուցեց ։
18 Եւ Դաւիթ թագաւորը գնաց,
Տէրոջը առջեւը նստաւ, ու ըսաւ.
Ո՛վ Տէր Եհովայ, ես ո՞վ եմ, ու
իմ տունս ի՞նչ է, որ զիս մինչեւ
19 հոս բերիր. Սակայն ասիկայ ալ
քու աչքերուդ պզտիկ երեւցաւ, ո՛վ
Տէր Եհովայ, նու քու ծառայիդ
տանը վրայով հեռաւոր ժամանա-
կին համար ալ խօսեցար. մար-
դոց սովորութիւնը ասիկա՞յ է ար-
20 դեօք, ով Տէր Եհովայ ։ Եւ Դա-
ւիթ նորէն մէյմըն ալ քեզի ի՞նչ
զրուցէ. քանզի դուն՝ ո՛վ Տէր Ե-
հովայ, քու ծառադ կը ճանչնաս ։
21 Աս բոլոր մեծ բաները քու խօսքիդ
համար՝ ու քու սրտիդ պէս ըրիր,
22 որ ծառայիդ գիտցընես ։ Ասոր
համար մեծ երեւցար, ո՛վ Տէր Աս-
տուած. քանզի քեզի պէս ուրիշ
մէկը չկայ, ու քեզմէ զատ Աս-
տուած չկայ, մեր ականջներովը
23 բոլոր լսածներնուս համեմատ ։ Եւ
ո՞ր ազգը երկրիս վրայ քու ժողո-
վուրդիդ Իսրայէլին պէս է, որուն
համար նոյն ինքն Աստուած եկաւ
զանիկայ փրկելու, իրեն ժողովուրդ
ընելու, ու իրեն մեծ անուն վաստը-
կելու, եւ քու երկրիդ մէջը մեծ
ու սոսկալի բաները ընելու, քե-
զի համար Եգիպտոսէն ազատած
ժողովուրդիդ առջեւէն՝ ազգերը ու
անոնց աստուածները վռնտելով ։
24 Եւ քու ժողովուրդդ Իսրայէլը
յաւիտեան քեզի ժողովուրդ հաս-
տատեցիր, ու դուն ո՛վ Տէր՝ ա-
25 նոնց Աստուած եղար ։ Եւ հիմա
ո՛վ Տէր Աստուած, քու ծառայիդ
համար ու անոր տանը համար ըսած
խօսքդ յաւիտեան հաստատէ, ու
26 ըսածիդ պէս ըրէ. Եւ քու անունդ
յաւիտեան մեծ ճանչցուի, ու ըսեն
թէ՝ Զօրութեանց Տէրը՝ Իսրայէլին
վրայ Աստուած է. ու քու ծառա-
յիդ Դաւիթին տունը քու առջեւդ
27 հաստատ մնայ ։ Քանզի դուն՝ ո՛վ
Տէր զօրութեանց Աստուած Իսրա-
յէլի, քու ծառայիդ յայտնեցիր
ու ըսիր. Քեզի տուն պիտի շի-
նեմ. ասոր համար քու ծառադ իր
սրտին մէջ համարձակութիւն գտաւ
28 աս աղօթքը քեզի ընելու ։ Եւ հի-
մա ո՛վ Տէր Եհովայ, ան Աստուա-
ծը դուն ես, ու քու խօսքերդ
ճշմարիտ են, եւ քու ծառայիդ աս
29 աղէկութիւնը խոստացար ։ Ուստի
հիմա ‡կամք ըրէ՝ քու ծառայիդ
տունը օրհնելու, որ յաւիտեան քու
առջեւդ ըլլայ. քանզի ո՛վ Տէր Եհո-
վայ, դուն զրուցեցիր, ու քու
օրհնութեամբդ՝ ծառայիդ տունը՝
յաւիտեան օրհնեալ պիտի ըլլայ ։

## ԳԼ. Ը

1 Դաւիթ՝ Փղշտացիները ու Մովաբացիները կը նուաճէ. 3 Ադրաազարը ու Ասորիները կը զարնէ ։ 9 Թովու թագաւորը՝ իր որդին Յովրամը ընծաներով կը խրկէ՝ Դաւիթը օրհնելու համար ։ 11 Դաւիթ ան ընծաները ու աւարը Աստուծոյ կը նուիրէ ։ 14 Եդովմի մէջ պահակապաններ կը դնէ ։ 16 Դաւիթին պաշտօնատարները ։

1 Անկէ ետեւ Դաւիթ Փղշտացիները
զարկաւ, զանոնք նուաճեց. եւ
Դաւիթ Փղշտացւոց ձեռքէն Մե-
2 թեկամման առաւ. Նաեւ Մովաբը
զարկաւ, ու գետինը պառկեցընե-
լով զանոնք լարով չափեց. երկու
լարով մեռցընելու չափեց, ու մէկ
ամբողջ լարով ապրեցընելու. ու
Մովաբացիք Դաւիթին հարկա-
3 տու ծառաներ եղան ։ Եւ Դա-
ւիթ՝ Սուբայի թագաւորը Ռու-

Ն. Ք. Ա. Ք.
Իրր 1042

ս բ Օր. գ. 24։ գ. 35։ Լբ. 39։ ա Թագ. Բ. 2։ Սաղ. Ձզ. 8։ ՁԹ. 6, 8։ Եսա. Խե. 5, 18, 22։
է բ Օր. դ. 7, 32, 34։ Լգ. 29։ Սաղ. Ճխէ. 20։
† Եբր. և ձեզի համար
+ բ Օր. Թ. 26։ Նեեմ. ա. 10։
° բ Օր. Իզ. 18։
$ Սաղ. Խը. 14։
ս Յոհ. Ժէ. 17։
‡ Կամ՝ սկսէ՝
ք Գլ. Իբ. 51։

Իրր 1040
ա ա Մն. Ժը. 1, &c։
բ Թուռ. Իդ. 17։
գ Հմր 6, 14։ Սաղ. Հբ. 10։ Տես Թագ. Ժ. 27։
դ Գլ. Ժ. 6։ Սաղ. Կ. ին վերնագիրը։

Ն. Ք. ԴՔ. Իրր 1040

[ե] ա Մն. ժը. 3։
[զ] Տես Ծն. ժե. 18։
* Եբր. ձեռքը դարձընելու
[է] Տես ա Մն. ժը. 4։
[ը] Յես. ժա. 6, 9։
† Կամ՝ կառքերը քակեց, ու անոնցմէ միայն հարիւր կառք պահեց։
[թ] գ Թագ. ժա. 23, 24, 25։
[ժ] Հմր 2։
[ի] Հմր 14։ Գլ. է. 9։
[լ] Տես գ Թագ. ժ. 16։
[խ] Տես ա Մն. ժը. 8։
[ծ] ա Մն. ժը. 9։
‡ Կամ՝ Ադորամ. տես ա Մն. ժը. 10։
[կ] գ Թագ. է. 51։ ա Մն. ժը. 11։ իզ. 26։
[հ] գ Թագ. ժդ. 7։
[ձ] Տես ա Մն. ժը. 12. Սաղ. կ. ին վերնագիրը։
‖ Կամ՝ Եդովմայեցիները. տես ա Մն. ժը. 12։
[ղ] Ծն. իէ. 29, 37, 40։ Թուոց. իդ. 18։
[ճ] Հմր 6։
[մ] Գլ. ժթ. 13։ ի. 23։ ա Մն. ժա. 6։ ժը. 15։
[յ] գ Թագ. դ. 3։

բի որդին [ե]Ադրաազարը զարկաւ,
երբոր [զ]Եփրատ գետին վրայ
իր *իշխանութիւնը հաստատե-
4 լու" կ'երթար ։ Ու Դաւիթ
անկէ [է]հազար եօթը հարիւր ձիա-
ւոր՝ ու քսան հազար հետեւակ զօրք
բռնեց. և Դաւիթ [ը]բոլոր †կառ-
քի ձիերուն ջիղերը կտրեց, ու
անոնցմէ միայն հարիւր ձի իրեն հա-
5 մար պահեց" ։ [թ]Եւ Դամասկոսի Ա-
սորիները՝ Սուբայի թագաւորին
Ադրաազարին օգնութիւն ընելու ե-
կան. ու Դաւիթ Ասորիներէն քը-
սանուերկու հազար մարդ զարկաւ ։
6 Եւ Դաւիթ Դամասկոսի Ասորւոց
մէջ բերդապահ զօրքեր դրաւ. ու
Ասորիները [ժ]Դաւիթին հարկատու
ծառայ եղան. [ի]ու Դաւիթ ուր որ
կ'երթար, Տէրը անոր յաջողու-
7 թիւն կու տար ։ Եւ Դաւիթ՝ Ադ-
րաազարին ծառաներուն ոսկիէ վա-
հանները առաւ, ու զանոնք Երու-
8 սաղէմ բերաւ ։ Եւ Ադրաազարին
քաղաքներէն՝ [լ]Բեթահէն ու Բե-
րոթայէն՝ Դաւիթ թագաւորը
խիստ շատ պղինձ առաւ ։
9 Ու [ծ]Եմաթի թագաւորը Թովու՝
երբոր լսեց որ Դաւիթ՝ Ադրաազա-
10 րին բոլոր զօրքերը ջարդեր է, Թո-
վու իր որդին ‡Յովրամը Դաւիթ
թագաւորին խրկեց, որ անոր բարև
ընէ ու զանիկայ օրհնէ, Ադրաազարին
դէմ պատերազմ ընելուն ու զանի-
կայ զարնելուն համար. (քանզի
Ադրաազարը Թովուին հետ պատե-
րազմներ կ'ընէր ։) Ու Յովրամին
ձեռքը՝ արծաթէ անօթներ, ոսկիէ
անօթներ ու պղնձէ անօթներ կա-
11 յին ։ Դաւիթ թագաւորը [կ]զա-
նոնք ալ Տէրոջը նուիրեց, միւս
նուիրած արծաթին ու ոսկիին
հետ, որոնք բոլոր իր յաղթած ազ-
12 գերէն առեր էր. Ասորիներէն, Մո-
վաբէն, Ամմոնի որդիներէն, Փղշ-
տացիներէն, Ամաղեկէն, և Սուբայի
թագաւորին՝ Ռոոբի որդւոյն Ադ-
13 րաազարին աւարէն ։ Ու Դաւիթ՝
երբոր [հ]Աղի ձորին մէջ [ձ]տասնուու-
թը հազար ‖Ասորիները կոտրեց ու
ետ դարձաւ, մեծ անուն վաստըկե-
14 ցաւ ։ Ու Եդովմի մէջ բերդապահ
զօրքեր դրաւ. բոլոր Եդովմի երկրին
մէջ բերդապահ զօրքեր դրաւ. և
[ղ]բոլոր Եդովմայեցիք Դաւիթին
ծառայ եղան. [ճ]ու Դաւիթ ուր որ
կ'երթար, Տէրը անոր յաջողու-
թիւն կու տար ։
15 Եւ Դաւիթ բոլոր Իսրայէլին
վրայ թագաւորութիւն ըրաւ. ու
Դաւիթ իր բոլոր ժողովուրդին ի-
րաւունք ու արդարութիւն կ'ը-
16 նէր ։ [մ]Եւ Շարուհեայի որդին Յո-
վաբը զօրքերուն վրայ էր. ու [յ]Ա-
քիղուդի որդին Յովսափատը յի-
17 շատակագիր էր. Եւ [ն]Աքի-
տովբի որդին Սադովկը ու Աբիա-
թարի որդին Աքիմելէքը քահա-
նաներ էին. ու §Սարայիան ատե-
18 նադպիր էր. Եւ [շ]Յովիադայի որ-
դին Բանեան [ո]Քերեթիներուն ու
Փելեթիներուն վրայ էր. ու Դաւի-
թին որդիքը ⁑նախարարներ էին ։

## ԳԼ. Թ

1 Դաւիթ՝ Սիբայի միջոցով Մեմփիբոսթէն բերել կու տայ, 7 ու Յովնաթանին սիրոյն համար՝ զանիկայ իրեն սեղանակից կ'ընէ, և Սաւուղին բոլոր կալուածքները անոր վրայ կը դարձընէ, 9 ու Սիբան անոր երկրագործը կ'ընէ ։

1 Եւ Դաւիթ ըսաւ. Արդեօք Սա-
ւուղին տունէն մնացած մարդ
մը կա՞յ, որ [պ]Յովնաթանին սիրոյն
համար անոր բարերարութիւն ը-
2 նեմ ։ Ու Սաւուղին տունէն՝ [ջ]Սի-
բա անունով ծառայ մը կար, ու
զանիկայ Դաւիթին կանչեցին. և
թագաւորը անոր ըսաւ. Սիբան
դո՞ւն ես. ու անիկայ ըսաւ. Ծա-
3 ռադ եմ ։ Ու թագաւորը ըսաւ.
Սաւուղին տունէն մնացած մարդ
մը չկա՞յ, որ անոր [ռ]Աստուծոյ ողոր-
մութիւնը ընեմ ։ Եւ Սիբան ըսաւ
թագաւորին. Յովնաթանէն [ս]ոտ-
4 քերը կաղ որդի մը մնաց ։ Ու
թագաւորը անոր ըսաւ. Անիկայ
ո՞ւր է ։ Եւ Սիբա ըսաւ թագա-
ւորին. Ահա՛ անիկայ [վ]Լադաբարի
մէջ Ամիելի որդւոյն Մաքիրին
5 տունն է ։ Եւ Դաւիթ թագաւորը
մարդ խրկեց, ու զանիկայ Լադա-
բարէն Ամիելի որդւոյն Մաքիրին
6 տունէն առաւ ։ Եւ Սաւուղին
որդւոյն Յովնաթանին որդին
[տ]Մեմփիբոսթէն երբոր Դաւիթին
եկաւ, երեսի վրայ ինկաւ ու երկըր-
պագութիւն ըրաւ ։ Եւ Դաւիթ
ըսաւ. Ո՛վ Մեմփիբոսթէ. ու ա-
նիկայ ըսաւ. Ահա՛ քու ծառադ ։
7 Եւ Դաւիթ անոր ըսաւ. Մի՛ վախ-
նար. քանզի [ր]քու հօրդ Յովնա-
թանին սիրոյն համար քեզի ան-
շուշտ բարերարութիւն պիտի ը-
նեմ, ու քու հօրդ Սաւուղին բո-
լոր արտերը քու վրադ պիտի դար-
ձընեմ. ու դուն միշտ իմ սե-
8 ղանս հաց պիտի ուտես ։ Եւ անի-
կայ երկրպագութիւն ըրաւ ու ը-
սաւ. Քու ծառադ ո՞վ է, որ ինծի
պէս [ց]մեռած շան մը վրայ նայե-
9 ցար ։ Իսկ թագաւորը՝ Սաւուղին
մանչը Սիբան կանչեց, ու անոր ը-
սաւ. [ւ]Սաւուղին ու անոր տանը
բոլոր ստացուածքը՝ քու տիրոջդ
10 որդւոյն տուի ։ Եւ դուն ու քու
որդիքդ ու ծառաներդ՝ անոր հա-
մար երկիրը գործեք, ու անոր

Ն. Ք. ԴՔ. Իրր 1040

[ն] ա Մն. իդ. 3։
§ Կամ՝ Սուսան. տես ա Մն. ժը. 16։
[շ] ա Մն. ժը. 17։
[ո] ա Թագ. լ. 14։
⁑ Եբր. քահանաներ. գլ. ի. 26։
[պ] ա Թագ. ժը. 3։ ի. 14, 15, 16, 17, 42։ Առակ. իէ. 10։
[ջ] Գլ. ժզ. 1։ ժթ. 17, 29։
[ռ] ա Թագ. ի. 14։
[ս] Գլ. դ. 4։
[վ] Գլ. ժէ. 27։
[տ] ա Մն. ը. 34՝ կ'ըսուի Մերիբբաաղ
[ր] Հմր 1, 3։
[ց] ա Թագ. իդ. 15։ Գլ. ժզ. 9։
[ւ] Տես Գլ. ժզ. 4։ ժթ. 29։

Ն․ք․գ․ք․ Իբր 1040

պտուղը ինծի բերես, որ քու տիրոջդ
որդին ուտելու հաց ունենայ. և
քու տիրոջդ որդին Մեմփիբոսթէն
ժմիշտ իմ սեղանս հաց պիտի
ուտէ ։ Ու Սիբա տասնուհինգ
11 որդի ու քսան ծառայ ունէր ։ Եւ
Սիբա ըսաւ թագաւորին. Իմ թա-
գաւոր տէրս քու ծառայիդ ինչ որ
հրամայեց, քու ծառադ այնպէս
պիտի ընէ ։ Բայց Մեմփիբոսթէն՝
(ըսաւ Դաւիթ,) թագաւորին որ-
դւոցը մէկուն պէս՝ իմ սեղա-
12 նէս հաց պիտի ուտէ ։ Ու Մեմ-
փիբոսթէ մէկ պզտիկ տղայ մը
ունէր, Նոր անունը Միքա
էր. և Սիբային տունը բոլոր բնա-
կողները՝ Մեմփիբոսթէին ծառա-
13 ներն էին ։ Ու Մեմփիբոսթէ Ե-
րուսաղէմի մէջ բնակեցաւ. Ի քան-
զի միշտ թագաւորին սեղանը հաց
կ'ուտէր. ու ծանիկայ իր երկու
ոտքերովը կաղ էր ։

ԳԼ․ Ժ

1 Դաւիթ դեսպաններ կը խրկէ Նաասի որդին Անոնը մխիթարելու, բայց անիկայ անարգանօք կը վարուի անոնց հետ ։ 6 Ամմոնացիք թէև Ասորիներէն օգնութիւն կը գտնեն, բայց Յովաբէն ու Աբեսսայէն կը յաղթուին ։ 15 Ասորւոց զօրագլուխը Սովբակ նոր ձեռնտուութիւն մը կ'ընէ Ամմոնացիներուն. իսկ ինքը Դաւիթէն կը սպաննուի ։

1 Ու անկէ ետև Ամմոնի որդւոց
թագաւորը մեռաւ. ու անոր
որդին Անոնը անոր տեղը թագաւոր
2 եղաւ ։ Եւ Դաւիթ ըսաւ. Նաա-
սի որդւոյն Անոնին մարդասիրու-
թիւն ընեմ, ինչպէս որ անոր հայ-
րը ինծի մարդասիրութիւն ըրաւ.
ու Դաւիթ իր ծառաները անոր
խրկեց, որ զանիկայ իր հօրը վրա-
յով մխիթարեն. ու Դաւիթին
ծառաները Ամմոնի որդւոց երկիրը
3 գացին ։ Եւ Ամմոնի որդւոց իշ-
խանները՝ իրենց տիրոջը Անոնին
ըսին. Միթէ Դաւիթ քու հայրդ
քու առջևդ պատուելու համար
քեզի մխիթարիչներ խրկեց. չէ՞ որ
Դաւիթ իր ծառաները քեզի խրր-
կեց, որ քաղաքը աչքէ անցընեն
ու լրտեսեն, որ ետքը զանիկայ կոր-
4 ծանէ ։ Եւ Անոն՝ Դաւիթին ծա-
ռաները առաւ, ու անոնց մօրու-
քին կէսը ածիլել տուաւ, ու ա-
նոնց հանդերձներուն ալ կէսը բմին-
չև նստոյ տեղը կտրել տուաւ, և
5 ետ խրկեց զանոնք ։ Ու երբոր
այս բանը Դաւիթին պատմուեցաւ,
զանոնք դիմաւորելու մարդ խրկեց.
քանզի ան մարդիկները շատ անար-
գուեր էին. ու թագաւորը ըսաւ.
Երիքովի մէջ նստէ՛ք՝ մինչև որ մօ-
րուքնիդ աճի, ու ետքը դարձէք ։
6 Եւ Ամմոնի որդիքը տեսնելով որ
գԴաւիթին հետ աւրուեցան, Ամ-
մոնի որդիքը մարդ խրկեցին, ու
դԲեթռոոբի Ասորիներէն և Սու-
բայի Ասորիներէն քսան հազար
հետեւակ, ու Մաաքայի թագաւո-
րէն հազար մարդ, և *Իստովբէն
տասներկու հազար մարդ վարձ-
7 քով բռնեցին ։ Ու երբոր Դաւիթ
ասիկա լսեց, Յովաբը ու բոլոր եզօ-
8 րաւոր զօրքերը խրկեց ։ Եւ Ամ-
մոնի որդիքը ելան, ու քաղաքին
դրանը առջևը կարգաւ պատերազմի
շարուեցան. բայց զՍուբայի և
Ռոոբի Ասորիները, ու †Իստովբը
ու Մաաքան" դաշտին մէջ զատ կայ-
9 ներ էին ։ Եւ Յովաբ երբոր տեսաւ
որ պատերազմը առջևէն ու ետևէն
իր վրայ կը հասնի, Իսրայէլի բոլոր
ընտրուած մարդիկներէն ընտրեց,
ու Ասորւոց դէմ պատերազմի շա-
10 րեց. Եւ մնացած զօրքը՝ իր եղբօրը
Աբեսսային յանձնեց, որ Ամմոնի
11 որդւոցը դիմացը շարէ. Ու ըսաւ.
Թէ որ Ասորիները զիս յաղթելու
ըլլան, ինծի օգնութեան հասնիս.
և թէ որ Ամմոնի որդիքը քեզ
յաղթելու ըլլան, ես քեզի օգնու-
12 թեան պիտի հասնիմ. էՔաջա-
սիրտ եղիր, ու ըմեր ժողովուրդին
համար և մեր Աստուծոյն քաղաք-
ներուն համար ուժով պատերազ-
մինք, ու ըՏէրը իր աչքին հաճոյ
13 երևցածը թող ընէ ։ Եւ Յովաբ
իր հետը եղող զօրքով Աս-
րիներուն մօտեցաւ, որ անոնց
դէմ պատերազմ ընէ. ու անոնք
14 անոր առջևէն փախան ։ Եւ Ամ-
մոնի որդիքը Ասորւոց փախչիլը
տեսնելով, անոնք ալ Աբեսսային
առջևէն փախան, ու քաղաքը մը-
տան ։ Եւ Յովաբ Ամմոնի որդի-
ներէն դարձաւ, ու Երուսաղէմ ե-
կաւ ։
15 Երբոր Ասորիները տեսան որ ի-
րենք Իսրայէլին առջևը կոտրուե-
16 ցան, մէկտեղ ժողվուեցան ։ Ու
Ադրաազար մարդ խրկեց, և Գետին
մէկալ կողմը եղող Ասորիները ոտք
հանեց. ու Եղամ եկան. և անոնց
առջևէն Ադրաազարին զօրագլուխը
17 ժՍովբակը կ'երթար ։ Ու երբոր Դա-
ւիթին պատմեցին, անիկայ բոլոր
Իսրայէլը ժողվելով, Յորդանանէն
անցաւ, ու Եղամը հասաւ. և Ա-
սորիները Դաւիթին դիմացը գուն-
դերով շարուեցան, ու անոր հետ
18 պատերազմ ըրին ։ Եւ Ասորիները
Իսրայէլին առջևէն փախան. ու
Դաւիթ՝ Ասորիներէն եօթը հարիւր
կառք ու քառասուն հազար եձիա-
ւոր կոտրեց, ու անոնց զօրագլու-
խը Սովբակը զարկաւ, որ հոն մե-
19 ռաւ ։ Եւ Ադրաազարին հպատակ

ժ Հմր 7. 11. 13. Գլ. ժթ. 28.
ե Գլ. ժթ. 17.
լ Մն. ը. 34.
խ Հմր 7. 10.
ծ Հմր 3.
Իբր 1037 ա Մն. ժթ. 1, &c
բ Եւ. ի. 4. ծե. 2. ե

Ն․ք․գ․ք․ Իբր 1040
գ Ծն. լդ. 30. Եւ. ե. 21. ա Թագ. ժգ. 4.
դ Գլ. ը. 3. 5.
* Կամ՝ Տովբի մարդիկներէն. տես Դատ. ժա. 3. 5.
ե Գլ. իգ. 8.
զ Հմր 6.
† Կամ՝ Տովբի ու Մաաքայի մարդիկը
է Օր. լա. 6.
ը Թագ. գ. 9. ա Կոր. ժգ. 13.
ը Թագ. գ. 18.
Իբր 1036
ժ Մն. ժթ. 16.
ե Մն. ժթ. 18.

Ն․ Ք․ ԳՔ․
Իրր 1036

ն Գլ․ Ը․ 6։

եղող բոլոր թագաւորները երբոր
տեսան որ Իսրայէլին առջևը յաղ-
թուեցան , Իսրայէլին հետ հաշ-
տութիւն ըրին , ու ն անոր ծառայ
եղան . և Ասորիները անկէ ետքը
Ամմոնի որդւոցը օգնելու կը վախ-
նային ։

## ԳԼ․ ԺԱ

1 Յովաբ՝ Ռաբբան պաշարած ատենը , Դաւիթ շնութիւն կ՚ընէ Բերսաբէին հետ ։ 6 Դաւիթ իր ըրած շնութիւնը ծածկելու համար , Ուրիան բերել կու տայ . բայց անիկայ տուն երթալ չուզեր ; ո՛չ զգաստութեան ատենը և ո՛չ գինովութեան ։ 14 Ուրիա իր մահուանը պատճառ ըլլալու նամակը Յովաբին կը տանի ։ 18 Յովաբ անոր մեռնելուն լուրը Դաւիթին կը խրկէ ։ 26 Դաւիթ Բերսաբէն իրեն կնիկ կ՚առնէ ։

Իրր 1035
ա Գթագ․ Ի․ 22, 26։ Բ Մն․ ԼԶ․ 10։
բ ա Մն․ Ի․ 1։
գ Որ․ Իբ․ 8։
դ Ծն․ ԼԴ․ 2։ Յոբ․ ԼԱ․ 1։ Մատ․ Ե․ 28։
ե Ղւ․ Իգ․ 39։
* Կամ՝ Ամիելին ։ ա Մն․ Գ․ 5։
† Եբր․ Բեթսաբէն
զ Սաղ․ Ծա․ ին վերնագիրը։ Յակ․ Ա․ 14։
է Ղև․ ԺԵ․ 19, 28։ ԺԲ․ 19։
ը Ծն․ Ժբ․ 4։ ԺԹ․ 2։
‡ Կամ՝ կերակուրի բաժին

1 Ու ա հետևեալ տարին՝ թագաւոր-
ներուն պատերազմի ելլելու ատե-
նը , բ Դաւիթ՝ Յովաբը ու անոր
հետ իր ծառաները ու բոլոր Իսրա-
յէլը խրկեց , որոնք Ամմոնացիները
կոտորեցին , ու Ռաբբան պաշարե-
ցին . բայց Դաւիթ Երուսաղէմ
2 կը նստէր ։ Ու մէկ օր մը իրիկուան
դէմ Դաւիթ իր անկողինէն ելլելով՝
գ պալատին տանիքին վրայ կը պտը-
տէր , և տանիքին վրայէն դ մէկ
կնիկ մը տեսաւ որ կը լուացուէր ,
ու այն կնիկը տեսքով խիստ գեղե-
3 ցիկ էր ։ Եւ Դաւիթ մարդ խրկեց ,
ու այն կնկանը համար հարցուց .
ու մէկը ըսաւ . Ասիկայ ե Քետացի
Ուրիային կնիկը՝ * Եղիամին աղջիկը
4 † Բերսաբէն է ։ Եւ Դաւիթ պատ-
գամաւորներ խրկեց , ու զանիկայ
առաւ , ու երբոր մէկը անոր եկաւ ,
զ Դաւիթ անոր հետ պառկեցաւ . ու
անիկայ է իր անմաքրութենէն դեռ
նոր մաքրուած էր , ետքը մէկը իր
5 տունը գնաց ։ Եւ կնիկը յղացաւ ,
ու Դաւիթին լուր խրկեց՝ ըսելով .
6 Ես յղի եմ ։ Եւ Դաւիթ՝ Յովա-
բին հրաման խրկեց , ու ըսաւ . Քե-
տացի Ուրիան ինծի խրկէ ։ Յո-
վաբն ալ Ուրիան Դաւիթին խըր-
7 կեց ։ Ու երբոր Ուրիան անոր ե-
կաւ , Դաւիթ Յովաբին ողջու-
թիւնը ու զօրքին ողջութիւնը ու
պատերազմին վիճակը հարցուց ։
8 Եւ Դաւիթ Ուրիային ըսաւ . Տու-
նըդ իջիր , ու ը ոտքերդ լուա ։ Եւ
Ուրիա՝ թագաւորին պալատէն ե-
լածին պէս , անոր ետևէն թագա-
9 ւորէն ‡ պարգև գնաց ։ Բայց Ու-
րիա իր տիրոջը բոլոր ծառաներուն
հետ՝ պալատին դուռը պառկեցաւ ,
10 ու իր տունը չիջաւ ։ Եւ Դաւի-
թին պատմեցին ու ըսին թէ՝ Ու-
րիան իր տունը չիջաւ ։ Եւ Դաւիթ
Ուրիային ըսաւ . Դուն ճամբայէ
չե՞ս եկեր , ինչո՞ւ համար քու տունդ
11 չես իջներ ։ Եւ Ուրիա ըսաւ Դա-
ւիթին . թ Տապանակը ու Իսրայէլը
ու Յուդան վրաններու մէջ կը նըս-
տին , և ժ իմ տէրս Յովաբը ու իմ
տիրոջս ծառաները բաց դաշտի
մէջ կը բանակին , ու ես ուտելու
ու խմելու և կնկանս հետ պառկե-
լու համար իմ տունս երթամ .
դուն կենդանի ես , ու քու հոգիդ
կենդանի է՝ որ ես այս բանը չեմ
12 ըներ ։ Եւ Դաւիթ Ուրիային ը-
սաւ . Այսօր ալ հոս մնացիր , ու
վաղը քեզ խրկեմ ։ Եւ Ուրիա այն
օրը ու հետևեալ օրը Երուսաղէմի
13 մէջ մնաց ։ Եւ Դաւիթ հրաւի-
րեց զանիկայ , որ անոր առջևը կե-
րաւ խմեց . ու Դաւիթ ի զանիկայ
գինովցուց . իսկ Ուրիա իրիկու-
նը ելաւ՝ ու լ իր տիրոջը ծառա-
ներուն քովը իր անկողինին մէջ
պառկեցաւ . բայց իր տունը չի-
14 ջաւ ։ Եւ առաւօտուն՝ Դաւիթ
խ նամակ մը գրեց Յովաբին , և Ու-
15 րիային ձեռքովը խրկեց ։ Ու նամա-
կին մէջը գրեց ու ըսաւ . Ուրիան
խիստ սաստիկ պատերազմին դի-
մացը դրէք , ու դուք ետ քաշուե-
16 ցէք , ծ որ զարնուի ու մեռնի ։ Ու
երբոր Յովաբ քաղաքը պաշարեց ,
Ուրիան այնանկ տեղ մը դրաւ՝ որ
հոն զօրաւոր մարդիկներ գտնուիլը
17 գիտէր ։ Եւ քաղաքին մարդիկները
ելան , ու Յովաբին հետ պատե-
րազմ ըրին . և զօրքէն՝ Դաւիթին
ծառաներէն ինկան , ու Քետացի
18 Ուրիան ալ մեռաւ ։ Եւ Յովաբ
պատգամաւոր մը խրկեց , ու պատե-
րազմին բոլոր պարագաները Դաւի-
19 թին իմացուց ։ Եւ պատգամա-
ւորին պատուիրելով՝ ըսաւ . Պա-
տերազմին բոլոր դիպուածները
20 թագաւորին պատմելէդ ետքը , թէ
որ թագաւորին բարկութիւնը ել-
լէ , ու քեզի ըսէ թէ՝ Ինչո՞ւ պա-
տերազմելու համար քաղաքին մօ-
տեցաք . չէի՞ք գիտեր որ պարսպէն
21 նետ կը նետեն . ‖ Յերոբաաղին որ-
դին կ Աբիմելէքը ո՞վ մեռցուց . չէ՞
որ մէկ կնիկ մը պարսպին վրայէն
երկանաքարի կտոր մը նետեց անոր
վրայ , որ անիկայ Թեբեսի մէջ մե-
ռաւ . պարսպին ինչո՞ւ մօտեցաք .
այն ատենը դուն ըսես . Քու ծա-
ռադ Քետացի Ուրիան ալ մեռաւ ։
22 Եւ պատգամաւորը գնաց , ու Յո-
վաբին բոլոր իրեն պատուիրածը
23 Դաւիթին պատմեց ։ Եւ պատգա-
մաւորը Դաւիթին ըսաւ . Այն մար-
դիկները մեր վրայ ուժովցան , ու
մեզի դէմ դաշտը ելան . բայց մենք
մինչև քաղաքին դուռը § հալածե-
24 ցինք զանոնք . Եւ աղեղնաւորնե-
րը պարսպին վրայէն քու ծառա-
ներուդ նետեր նետեցին , ու թա-

Ն․ Ք․ ԳՔ․
Իրր 1035
թ Գլ․ Է․ 2, 6։
ժ Գլ․ Ի․ 6։
ի Ծն․ ԺԹ․ 33, 35։
լ Հմր 9։
խ Տես Գ Թագ․ Իա․ 8, 9։
ծ Գլ․ Ժբ․ 9։
‖ Եբր․ Յերոբօսեթ . որ ըսել է՝ Ամօթալից բանը թող քամադրոմութիւն ընէ . տես Դատ․ Զ․ 32։
կ Դատ․ Թ․ 53։
§ Եբր․ անոնց վրայ էինք ։

Ն. Ք. Գ. Ք.
Իրր 1035

գաւորին ծառաներէն մէկ քանի-
ները մեռան, և քու ծառադ Քե-
25 տացի Ուրիան ալ մեռաւ։ Ան ա-
տենը Դաւիթ պատգամաւորին ը-
սաւ. Յովաբին այսպէս ըսես. Աս
բանը քու աչքերուդ գէշ չերևնայ.
քանզի սուրը երբեմն ասիկայ կ'ու-
տէ ու երբեմն անիկայ. քաղաքին
վրայ պատերազմը սաստկացուր, և
զանիկայ փլցուր. ու դուն ալ քա-
26 ջալերէ զանիկայ։ Եւ Ուրիային
կնիկը իր էրկանը Ուրիային մեռնի-
լը լսելով՝ իր էրկանը համար սուգ
27 ըրաւ։ Ու երբոր սուգը անցաւ,
Դաւիթ մարդ խրկեց, ու զանիկայ
իր տունը առաւ. և անիկայ [a]ա-
նոր կնիկը եղաւ. ու անոր որդի մը
ծնաւ։ Բայց Դաւիթին աս ըրած
բանը՝ Տէրոջը աչքերուն գէշ երև-
ցաւ։

ա Գլ. ԺԲ. 9։

## ԳԼ. ԺԲ

1 Նաթան՝ էգ գառնուկին առակը կը պատմէ, որով Դաւիթ կը ստիպուի ինքզինքը դատապարտել։ 7 Դաւիթ՝ Նաթանէն յանդիմանուելով՝ իր մեղքը կը խոստովանի, ու թողութիւն կը ստանայ։ 15 Դաւիթ՝ քանի որ իր տղան ողջ էր, անոր համար սուգ կ'ընէ ու կ'աղօթէ։ 24 Սողոմոն կը ծնանի, ու Յեդիդիա կ'անուանի։ 26 Դաւիթ՝ Ռաբբան կ'առնէ, ու անոր մէջը բնակող ժողովուրդը կը տանջէ։

Իրր 1034
[a]Սաղ. ծա. ին վերնագիրը։
[b]Տես Գլ. ԺԴ. 5, Ա. Գ Թագ. Ի. 35-41։ Ես. Ե. 3։

1 Ու Տէրը Նաթանը Դաւիթին
խրկեց. ու [a]անոր եկաւ, ու [b]ա-
նոր ըսաւ. Մէկ քաղաքի մը մէջ
երկու մարդ կար, մէկը հարուստ
2 ու մէկալը աղքատ։ Հարուստը
խիստ շատ հօտեր ու արջառներ
3 ունէր, Բայց աղքատը ուրիշ բան
մը չունէր, միայն թէ էգ գառնուկ
մը, որ ծախու առեր էր, ու կը
սնուցանէր. և զանիկայ անոր
հետ ու անոր տղոցը հետ մէկտեղ
մեծցաւ. անոր պատառէն կ'ու-
տէր, ու անոր գաւաթէն կը խմէր,
և անոր ծոցը կը պառկէր, ու անոր
4 աղջկան մը պէս էր։ Եւ ճամբորդ
մը եկաւ ան հարուստ մարդուն.
ան ալ խնայելով իր հօտերէն ու
արջառներէն առնելու, ու իրեն
եկող ճամբորդին կերակուր պատ-
րաստելու, գնաց ան աղքատ մար-
դուն էգ գառնուկը առաւ, ու զա-
նիկայ իրեն եկող մարդուն համար
պատրաստեց։
5 Ան ատենը Դաւիթին բարկու-
թիւնը ան մարդուն դէմ սաստիկ
բորբոքեցաւ, ու Նաթանին ըսաւ.
Տէրը կենդանի է որ՝ ատ բանը ը-
նող մարդը [c]մեռնելու արժանի է։
6 Եւ ան գառնուկը [d]չորեքպատիկ
պիտի հատուցանէ. քանզի աս
բանը ըրաւ ու գութ չունեցաւ։
7 Ան ատենը Նաթան՝ Դաւիթին
ըսաւ. Ան մարդը դուն ես. Իս-

գ Ա Թագ. ԻԶ. 16։
դ Ել. ԻԲ. 1։ Ղու. ԺԹ. 8։

րայէլին Տէր Աստուածը այսպէս
կ'ըսէ. [e]Քեզ Իսրայէլի վրայ ես
թագաւոր օծեցի, ու քեզ Սա-
8 ւուղին ձեռքէն ես ազատեցի. Եւ
տիրոջդ տունը քեզի՝ ու տիրոջդ
կնիկները քու ծոցդ տուի, և Իս-
րայէլի ու Յուդայի տունը քեզի
տուի. ու թէ որ քիչ [f]էր ատոնք,
քեզի [*]ատոնցմէ աւելի բաներ կու
9 տայի"։ [g]Ինչու համար Տէրոջը
խօսքը [h]անարգեցիր, անոր աչքե-
րուն առջևը չարութիւն ընելով.
[i]Քետացի Ուրիան սրով մեռցուցիր,
ու անոր կնիկը քեզի կնիկ առիր, ու
զանիկայ Ամմոնի որդւոց սրովը
10 սպաննեցիր։ Եւ հիմա զիս անար-
գելուդ համար, ու Քետացի Ու-
րիային կնիկը քեզի կնիկ առնելուդ
համար, [j]քու տունէդ սուրը յաւի-
11 տեան պակաս պիտի չըլլայ։ Ե-
Տէրը այսպէս կ'ըսէ. Ահա ես քու
տունէդ՝ քեզի դէմ չարիք մը պիտի
հանեմ. ու [k]քու աչքերուդ առջևը
քու կնիկներդ պիտի առնեմ, և
[l]ընկերիդ քու դրացիիդ պիտի տամ.
ու անիկայ աս արեգակին առջևը
քու կնիկներուդ հետ պիտի պառ-
12 կի։ Քանզի դուն ծածկաբար ըրիր.
[m]բայց ես աս բանը բոլոր Իսրայէլին
առջևը՝ ու արեգակին առջևը պի-
13 տի ընեմ։ [n]Եւ Դաւիթ՝ Նաթա-
նին ըսաւ. [o]Տէրոջը դէմ մեղք
գործեցի. ու Նաթան Դաւիթին
ըսաւ. Տէրն ալ [p]քու մեղքդ նե-
14 րեց. պիտի չմեռնիս։ Բայց որով-
հետև աս բանով Տէրոջը թշնամի-
ներուն [q]հայհոյութիւն ընելու ա-
ռիթ տուիր, անոր համար աս քեզի
ծնած տղան անշուշտ պիտի մեռնի։
15 Ու Նաթան իր տունը գնաց։
Եւ Տէրը զարկաւ ան մանուկը՝ որն
որ Ուրիային կնիկը Դաւիթին ծներ
էր. ու սաստիկ հիւանդացաւ։
16 Եւ Դաւիթ՝ մանուկին համար Աս-
տուծոյ աղաչեց. ու Դաւիթ ծոմ
պահեց, ու գնաց [r]բոլոր գիշերը
17 գետնի վրայ պառկեցաւ։ Եւ անոր
տանը ծերերը անոր [†]քովը գացին",
որ զանիկայ գետնէն վերցընեն.
բայց անիկայ չուզեց, ու անոնց
18 հետ հաց չկերաւ։ Ու եօթներորդ
օրը մանուկը մեռաւ. և Դաւիթին
ծառաները՝ մանուկին մեռնիլը ա-
նոր իմացընելու վախցան. քանզի
ըսին. Ահա քանի որ մանուկը ողջ
էր, անոր զրուցեցինք, ու անիկայ
մեր խօսքը մտիկ չըրաւ. և ինչպէս
անոր ըսենք թէ՝ Մանուկը մեռաւ,
19 որ գէշ բան մը ընէ։ Բայց Դա-
ւիթ իր ծառաներուն շշունջը տես-
նելով՝ իմացաւ որ մանուկը մեռեր
է. ու Դաւիթ իր ծառաներուն ը-
սաւ. Մանուկը մեռա՞ւ. ու անոնք

Ն. Ք. Գ. Ք.
Իրր 1034

ե Ա Թագ. ԺԶ. 13։
* Եբր. այս ինչ ու այն ինչ բաները կ'աւելցունէի։
զ Տես Ա Թագ. ԺԵ. 19։
է Թուոց. ԺԵ. 31։
ը Գլ. ԺԱ. 15, 16, 17, 27։
թ Ամով. Է. 9։
ժ Բ Օր. ԻԸ. 30։ Գլ. ԺԶ. 22։
ի Գլ. ԺԶ. 22։
լ Տես Ա Թագ. ԺԵ. 24։
խ Գլ. ԻԴ. 10։ Յոբ. Է. 20։ Սաղ. ԼԲ. 5։ Ծա. 4։ Առակ. ԻԸ. 13։
ծ Գլ. ԻԴ. 10։ Սաղ. ԼԲ. 1։ Յոբ. Է. 21։ Միք. Է. 18։ Զաք. Գ. 4։
կ Ես. ԾԲ. 5։ Եզեկ. ԼԶ. 20, 23։ Հռով. Բ. 24։
հ Գլ. ԺԳ. 31։
† Եբր. վերայ ելան,

Ն. Ք. Գ. Փ. Իբր 1034

յ Հռովմ. գ. 3։
ղ Յոբ. ա. 20։

20 ըսին. Մեռաւ։ Ան ատենը Դաւ-
իթ գետնէն ելաւ, լուացուեցաւ,
յօծուեցաւ, հանդերձները փոխեց,
ու Տէրոջը տունը մտնելով՝ ղերկըր-
պագութիւն ըրաւ. ետքը իր տու-
նը դարձաւ. և ուզեց, ու անոր
21 առջեւը հաց դրին, ու կերաւ։ Եւ
ծառաները անոր ըսին. Աս ըրած
բանդ ի՞նչ պիտի ըլլայ. քանի որ
մանուկը ողջ էր, անոր համար ծոմ
պահեցիր ու լացիր. իսկ մանուկը
մեռածին պէս՝ ելար հաց կերար։
22 Եւ Դաւիթ ըսաւ. Քանի որ մանու-
կը ողջ էր, ծոմ պահեցի ու լացի.
ճքանզի ըսի. Ո՞վ գիտէ, դուցէ
Աստուած ինծի ողորմի, ու մանու-
23 կը առողջանայ։ Բայց հիմա անի-
կայ մեռած է, ինչո՞ւ համար ծոմ
պահեմ. միթէ ես կրնա՞մ զանիկայ
ետ դարձրնել. ես անոր պիտի եր-
թամ, բայց մանիկայ ինծի պիտի
24 չդառնայ։ Եւ Դաւիթ իր կնիկը
Բերսաբէն մխիթարեց. ու անոր
քովը մտաւ, և անոր հետ պառկե-
ցաւ. ու յանիկայ որդի մը ծնաւ.
ու նանոր անունը Սողոմոն դրաւ.
25 և Տէրը զանիկայ սիրեց։ Ու Նա-
թան մարգարէին ձեռքովը պատգամ
խրկեց. և անոր անունը՝ Տէրոջը
համար *Յեդիդիա կոչեց։
26 Ու շՅովաբ Ամմոնի որդւոցը
ոՌաբբային դէմ պատերազմ ըրաւ,
ու թագաւորանիստ քաղաքը ա-
27 ռաւ։ Եւ Յովաբ՝ Դաւիթին պատ-
գամաւորներ խրկեց, ու ըսաւ.
Ռաբբայի դէմ պատերազմ ըրի, ու
28 ջուրերուն քաղաքը առի. Եւ հիմա
մնացած ժողովուրդը ժողվէ՛, ու
քաղաքին դիմացը բանա՛կ դիր, և
զանիկայ ա՛ռ. չըլլայ որ քաղաքը ես
առնեմ, ու անոր վրայ իմ անունս
29 դրուի։ Ուստի Դաւիթ բոլոր ժո-
ղովուրդը ժողվեց, ու Ռաբբա
գնաց, և անոր դէմ պատերազմե-
30 լով՝ զանիկայ առաւ. չՈւ անոնց
թագաւորին գլխէն թագը առաւ,
որ տաղանդ մը ոսկիի ծանրու-
թիւն ունէր պատուական քարե-
րով զարդարուած. և անիկայ Դաւի-
թին գլուխը դրուեցաւ. ու Դա-
ւիթ քաղաքէն խիստ շատ աւար ա-
31 ռաւ։ Եւ անոր մէջը եղած ժողո-
վուրդը հանեց, ու զանոնք սղոցնե-
րու ու երկաթէ կամնասայլներու ու
երկաթէ տապարներու տակ դրաւ.
և զանոնք աղիւսի փուռէ անցուց.
ու Ամմոնի որդւոցը բոլոր քաղաք-
ներուն այսպէս ըրաւ. ու Դաւիթ
բոլոր ժողովուրդով Երուսաղէմ
դարձաւ։

ճ Տես Ես. լը. 1, 5։ Յովն. գ. 9։
մ Յոբ. է. 3, 9, 10։
1033
յ Մատ. ա. 6։
ն Ա Մն. իբ. 9։
* Եբ.՝ Տէրոջը սիրելին։
շ Ա Մն. ի. 1։
ո Բ Օր. գ. 11։
չ Ա Մն. ի. 2։

## ԳԼ. ԺԳ

1 Ամնոն՝ Թամարին սիրահարելով, Յովնադաբին խրատովը զինքը հիւանդ կը ձեւացնէ, ու զանիկայ բերել տալով կը լկէ. 15 ետքը ատելութեամբ մը զանիկայ դուրս հանել կու տայ։ 19 Աբիսողոմ՝ Թամարը կը մխիթարէ, և իր դիտաւորութիւնը ծածուկ կը պահէ. 23 ու երբոր իր ոչխարները ասրակտուր ընելու կ'երթայ, թագաւորին բոլոր որդւոցը առջեւը Ամնոնը կը մեռցնէ։ 30 Դաւիթ լսելով որ իր բոլոր որդիները մեռցուած են, կը վշտանայ, ու Յովնադաբ զանիկայ կը մխիթարէ։ 37 Աբիսողոմ Թողմիին քովը Գեսուր կը փախչի։

Ն. Ք. Գ. Փ. Իբր 1032

1 Եւ անկէ ետքը՝ Դաւիթին որ-
դւոյն աԱբիսողոմին մէկ գեղե-
ցիկ քոյրը կար, որուն անունը
բԹամար էր. ու զանիկայ Դաւի-
2 թին որդին Ամնոնը սիրեց։ Եւ
Ամնոն՝ իր քրոջը Թամարին սիրոյն
համար հիւանդանալու չափ նեղա-
ցաւ. քանզի անիկայ կոյս աղջիկ
ըլլալուն համար, անոր բան մը ը-
նելը՝ Ամնոնին աչքերուն դժուար
3 կ'երեւնար։ Եւ Ամնոն՝ Յովնադաբ
անունով բարեկամ մը ունէր, որ
անիկայ Դաւիթին եղբօրը գՍա-
մային որդին էր. ու Յովնադաբ
4 խիստ խորագէտ մարդ մըն էր։ Եւ
անոր ըսաւ. Ո՛վ թագաւորի տը-
ղայ, դուն ինչո՞ւ համար այդպէս
օրէ օր կը հալիս. պատճառը ինծի
չե՞ս յայտներ։ Ու Ամնոն անոր ը-
սաւ. Ես իմ եղբօրս Աբիսողոմին
քրոջը Թամարին սիրահարած եմ։
5 Եւ Յովնադաբ անոր ըսաւ. Անկո-
ղինիդ մէջը պառկէ՛, ու քեզ հիւանդ
ձեւացուր. ու երբոր քու հայրդ
քեզ տեսնելու գայ, անոր ըսէ՛.
Կ'աղաչեմ՝ որ իմ քոյրս Թամարը
ինծի գայ, ու ինծի հաց կերցը-
նէ, ու իմ աչքերուս առջեւը
կերակուր շինէ, որ տեսնեմ, ու
6 անոր ձեռքէն ուտեմ։ Եւ Ամնոն
պառկեցաւ, ու զինքը հիւանդ
ձեւացուց. ու երբոր թագաւորը
զանիկայ տեսնելու եկաւ, Ամնոն՝
թագաւորին ըսաւ. Կ'աղաչեմ,
իմ քոյրս Թամարը թող գայ, ու
իմ աչքերուս առջեւը դերկու բլիթ
շինէ, ու անոր ձեռքէն ուտեմ։
7 Եւ Դաւիթ՝ Թամարին մարդ խրր-
կեց տունը՝ ըսելով. Ամնոն եղբօրդ
տունը գնա, ու անոր կերակուր շի-
8 նէ։ Եւ Թամար իր եղբօրը Ամնո-
նին տունը գնաց. ու անիկայ պառ-
կած էր. և ալիւրը խմորը առաւ
շաղեց, ու անոր աչքերուն առջեւը
9 բլիթներ շինեց, ու եփեց. Եւ տա-
պակը առաւ, ու անոր առջեւը
պարպեց. բայց անիկայ ուտել չու-
զեց. ու Ամնոն ըսաւ. եՔովէս
ամէն մարդը դուրս հանեցէք. ու
ամէն մարդ անոր քովէն դուրս
10 ելան։ Եւ Ամնոն՝ Թամարին ը-
սաւ. Կերակուրը սենեակը ներս
բեր, որ ձեռքէդ ուտեմ։ Ու
Թամար շինած բլիթները առաւ,

ա Գլ. գ. 2, 3։
բ Ա Մն. գ. 9։
գ Տես Ա Թագ. ժզ. 9։
դ Ծն. ժը. 6։
ե Ծն. խե. 1։

Ն. Ք. գ.Ք. իբր 1032

ա Ծն. լԹ. 12։

բ Ծն. լԴ. 2։ Ղև. ԺԸ. 9, 11։ Ի. 17։

գ Ծն. լԴ. 7։ Դատ. ԺԹ. 23։ Ի. 6։

դ Տես Ղև. ԺԸ. 9, 11։

ե Բ Օր. ԻԲ. 25։ Տես Գլ. ԺԲ. 11։

ու իր եղբօրը Ամնոնին՝ սենեակը
11 տարաւ. Եւ անոր մօտեցուց, որ
ուտէ։ Իսկ Ամնոն ազանիկայ բռը-
12 նեց ու անոր ըսաւ. Եկո՛ւր քոյրս՝
ինծի հետ պառկէ՛։ Եւ անիկայ
ըսաւ անոր. Ո՛չ, եղբայրս՝ բզիս
մի՛ բռնադատեր. քանզի գԻսրայէ-
լի մէջ այդպէս բան չըլլար. աս
13 դանզգամութիւնը մի՛ ըներ։ Ու
ես իմ նախատինքս ո՞ւր տանիմ.
դուն ալ Իսրայէլի մէջ անզգամնե-
րուն մէկուն պէս պիտի ըլլաս. և
հիմա կ'աղաչեմ՝ թագաւորին ըը-
րուցէ՛, ու անիկայ զիս քեզմէ
14 չարգիլեր։ Բայց Ամնոն անոր խօս-
քը մտիկ ընել չուզեց. հապա անկէ
զօրաւոր ըլլալով, եզանիկայ բռնա-
դատեց, ու անոր հետ պառկեցաւ։
15 Ու ետքը Ամնոն զանիկայ խիստ շատ
ատեց. անանկ որ՝ ունեցած ատե-
լութիւնը՝ առջի ունեցած սէրէն
աւելի մեծ էր. և Ամնոն անոր ը-
16 սաւ. Ելի՛ր գնա՛։ Ու անիկայ անոր
ըսաւ. *Մի՛ ըներ աս բանը". զիս
վռընտելուդ չարութիւնը՝ մէկալ
ինծի ըրածէդ աւելի մեծ է. բայց
17 Ամնոն անոր մտիկ ընել չուզեց։ Եւ
իրեն ծառայութիւն ընող մանչը
կանչեց ու ըսաւ. Ասիկայ քովէս
դո՛ւրս †հանէ, ու ետևէն դուռը
18 կղպէ՛։ (Եւ աղջկան վրայ Նբազ-
մադոյն պատմուճան մը կար, քան-
զի թագաւորին կոյս աղջիկները
ասանկ պատմուճան կը հագ-
նէին։) Ու անոր ծառան զանի-
կայ դուրս հանեց, ու ետևէն դու-
19 ռը կղպեց։ Եւ Թամար էմոխիր
առաւ, ու իր գլխուն վրայ ցանեց,
ու իր վրայի բազմադոյն պատմու-
ճանը պատռեց, և ըձեռքը իր գըլ-
խուն վրայ դրաւ, ու լալով գնաց։
20 Եւ անոր եղբայրը Աբիսողոմ անոր
ըսաւ. Միթէ եղբայրդ Ամնոնը քե-
զի հե՞տ եղաւ. ու հիմա քո՛յրս՝
լո՛ւռ կեցիր. ան քու եղբայրդ է.
ասիկայ սիրտդ մի՛ դներ. և Թա-
մար՝ իր եղբօրը Աբիսողոմին տունը
21 անմխիթար կը նստէր։ Ու Դա-
ւիթ թագաւորը աս ամէն բաները
22 լսելով, խիստ ‡բարկացաւ։ Եւ
Աբիսողոմ Ամնոնին հետ թաղէկ
կամ գէշ խօսք մը չխօսեցաւ. քան-
զի Աբիսողոմ ժԱմնոնը կ'ատէր՝ իր
քոյրը Թամարը լլկելուն համար։
23 Ու երկու տարի անցնելէն ետքը,
երբոր Աբիսողոմին ոչխարները՝ Եփ-
րեմի մօտ եղած Բաաղասորին մէջ
իասրակտուր կ'ընէին, Աբիսողոմ՝
թագաւորին բոլոր որդիները հրա-
24 ւիրեց։ Եւ Աբիսողոմ՝ թագաւո-
րին գնաց ու անոր ըսաւ. Ահա քու
ծառայիդ ոչխարները ասրակտուր
կ'ընեն. շնո՛րհք ըրէ, թագաւորը

* կամ՝ Պատճառ չկայ.

† Եկէք. Հանեցէք.

զ Ծն. լԷ. 3։ Դատ. Ե. 30։ Սաղ. ԽԵ. 14։

է Յես. Է. 6։ Գլ. Ա. 2։ Յոբ. Բ. 12։

ը Երեմ. Բ. 37։

‡ Կամ՝ տրտմեցաւ։

թ Ծն. ԻԴ. 50։ լԱ. 24։

ժ Ղև. ԺԹ. 17, 18։

1030

ի Տես Ծն. լԸ. 12, 13։ Ա Թագ. ԻԵ. 4, 36։

ու անոր ծառաները՝ քու ծառայիդ
25 հետ երթան։ Եւ թագաւորը Ա-
բիսողոմին ըսաւ. Ո՛չ, որդիս,
ամէնքս չերթանք, որ քու վրադ
ծանրութիւն չըլլանք. ու զանիկայ
ստիպեց. բայց Դաւիթ երթալ
26 չուզեց, ու զանիկայ օրհնեց։ Եւ
Աբիսողոմ ըսաւ. Եթէ ոչ՝ գոնէ
իմ եղբայրս Ամնոնը մեր հետը գայ.
ու թագաւորը անոր ըսաւ. Անի-
27 կայ ինչո՞ւ քու հետդ երթայ։ Բայց
Աբիսողոմ զանիկայ ստիպելուն
համար՝ Ամնոնը ու թագաւորին
բոլոր որդիները անոր հետը խրկեց։
28 Եւ Աբիսողոմ իր մանչերուն պա-
տուիրեց ու ըսաւ. Նայեցէ՛ք, երբ-
որ Ամնոնին լսիրտը գինիէն զուար-
թանայ, ու ես ձեզի՝ Ամնոնը զար-
կէ՛ք ըսեմ, զանիկայ մեռցուցէ՛ք.
մի՛ վախնաք. խչէ՞ որ ես ձեզի հրա-
մայեցի. քաջասիրտ ու զօրաւոր
29 կտրիճնե՛ր եղէք։ Եւ Աբիսողոմին
մանչերը՝ Աբիսողոմին պատուիրա-
ծին պէս ըրին Ամնոնին. ու թա-
գաւորին բոլոր որդիքը ոտք ելան,
և ամէն մէկը իր ջորին հեծնելով՝
30 փախան։ Ու անոնք դեռ ճամբան
ըլլալով, Դաւիթին լուր բերին ու
ըսին. Աբիսողոմ՝ թագաւորին բո-
լոր որդիները մեռցուց, ու անոնց-
31 մէ մէկը չմնաց։ Եւ թագաւորը
ոտք ելաւ, ծիր հանդերձները պատ-
ռեց, ու կգետինը պառկեցաւ. ու
անոր բոլոր ծառաները հանդերձնին
պատռած անոր բոլորտիքը կը կայ-
32 նէին։ Ու Դաւիթին եղբօրը Սա-
մային որդին հՅովնադաբը պա-
տասխան տուաւ ու ըսաւ. Իմ
տէրս չկարծէ որ բոլոր երիտասարդ-
ները՝ թագաւորին որդիները մեռ-
ցուցին. քանզի մինակ Ամնոնը մե-
ռած է. վասն զի աս բանը Աբի-
սողոմին բերնովը որոշուած էր, ա-
նոր քոյրը Թամարը լլկած օրէն 'ի
33 վեր։ Ու հիմա ղիմ թագաւոր
տէրս իր սրտին մէջ աս բանը չդնէ,
կարծելով թէ՝ թագաւորին բոլոր
որդիքը մեռան. քանզի մինակ Ամ-
34 նոնը մեռած է։ ձԵւ Աբիսողոմը
փախաւ։ Ու երբոր Դաւիթին պա-
տանին՝ դէտը աչքերը վերցուց նա-
յեցաւ, տեսաւ որ իր ետևէն լեռա-
նը քովէն խիստ շատ ժողովուրդ
35 կու գար։ Ան ատենը Յովնադաբ՝
թագաւորին ըսաւ, Ահա՛ թագա-
ւորին որդիքը կու գան. ծառա-
36 յիդ խօսքը ելաւ։ Եւ անիկայ իր
խօսքը լմնցուցածին պէս, ահա՛
թագաւորին որդիքը եկան, ու
ձայներնին վերցուցին ու լացին. և
թագաւորն ալ ու անոր բոլոր ծա-
37 ռաները մեծ լացով մը լացին։ Իսկ
Աբիսողոմ փախաւ, ու Գեսուրի

Ն. Ք. գ.Ք. իբր 1030

լ Դատ. ԺԹ. 6, 9, 22։ Հռութ. Գ. 7։ Ա Թագ. ԻԵ. 36։ Եսթ. Ա. 10։ Սաղ. ՃԴ. 15։

խ Յես. Ա. 9։

ծ Գլ. Ա. 11։

կ Գլ. ԺԲ. 16։

հ Հմր 3։

ղ Գլ. ԺԹ. 19։

ձ Հմր 38։

Ն . Ք . գՔ .
1030

ն Գլ . գ . 3 ։
ղ Գլ . ժգ . 23 , 32 ։ ժե . 8 ։
ձ Սաղ . ձգ . 2 ։
ծ Ծն . լէ . 12 ։

թագաւորին՝ Ամիուդի որդւոյն
Թողմիին գնաց . բայց Դաւիթ ա-
մէն օր իր որդւոյն համար սուգ կ'ը-
38 նէր ։ Եւ Աբիսողոմ փախաւ , ու
Գեսուր գնաց , ու հոն իրեք տարի
39 մնաց ։ Եւ Դաւիթ թագաւորը
Աբիսողոմին ելլելու կը փափաքէր .
քանզի մեռնող Ամնոնին վրայով
մխիթարուեր էր ։

## ԳԼ . ԺԴ

1 Յովաբ՝ Թեկուացի կնիկ մը վարձքով կը բերանէ , որ առակով մը Աբիսողոմը տուն դարձընելու համոզէ թագաւորին սիրտը . և Յովաբ զանիկայ Երուսաղէմ կը բերէ ։ 25 Աբիսողոմին գեղեցկութիւնը , մազերը , ու անոր զաւակները ։ 28 Երկու տարիէն ետև Աբիսողոմ՝ Յովաբին ձեռօքը թագաւորին առջևը կը ներկայանայ ։

1027

ա Գլ . ժգ . 39 ։
բ Բ Մն . ժա . 6 ։
գ Տես Հռութ . գ . 3 ։
դ Հմր 19 ։ Ել . դ . 15 ։
ե Եբր . խօսեցաւ ։
զ ա Թագ . ի . 41 ։ Գլ . ա . 2 ։
է Տես դ Թագ . զ . 26 , 28 ։
ը Տես գլ . ժբ . 1 ։
թ Թուոց . լե . 19 ։ Բ Օր . ժթ . 12 ։
ժ Ծն . իէ . 13 ։ ա Թագ . իե . 24 ։ Մատ . իէ . 25 ։
ի Գլ . գ . 28 , 29 ։ գ Թագ . բ . 33 ։

1 Եւ Շարուհեայի որդին Յովաբը
իմացաւ որ թագաւորին սիրտը
2 Աբիսողոմին վրայ է ։ Ու Յովաբ՝
Թեկուէ մարդ խրկեց , և անկէ խե-
լացի կնիկ մը բերել տուաւ , ու ա-
նոր ըսաւ . Կ'աղաչեմ , քեզ սգա-
ւոր ձևացուր , ու սուգի հանդերձ-
ներ հագիր , եղով մի օծուիր , ու
մեռելի մը համար շատոնցմէ սուգ
3 ընող կնկան մը պէս եղիր . Եւ
թագաւորին մտիր , ու անոր աս
կերպով խօսէ . և Յովաբ անոր
4 բերանը խօսքեր դրաւ ։ Ու ան
Թեկուացի կնիկը՝ թագաւորին
"մտաւ խօսելու համար". ու երե-
սի վրայ գետինը իյնալով՝ անոր եր-
կրպագութիւն ըրաւ , ու ըսաւ .
5 Ով թագաւոր՝ օգնէ ինծի ։ Եւ
թագաւորը անոր ըսաւ . Քեզի
ի՞նչ եղաւ ։ Ու կնիկը ըսաւ .
Ոհ , ես մէկ որբևարի կնիկ մըն
6 եմ , ու իմ էրիկս մեռած է . Եւ
քու աղախինդ երկու որդի ունէր .
ու երկուքը դաշտի մէջ իրարու
հետ ծեծկուեցան . և անոնց մէջը
հաշտեցընող մը չըլլալուն համար ,
մէկը մէկալը զարկաւ , ու զանիկայ
7 մեռցուց ։ Եւ ահա բոլոր ազգա-
տոհմը՝ քու աղախնիդ դէմ ոտք
ելան , ու ըսին . Իր եղբայրը մեռ-
ցընողը տուր , որ զանիկայ մեռցը-
նենք՝ իր մեռցուցած եղբօրը կենացը
համար , ու ժառանգն ալ կորսըն-
ցընենք . և ինծի մնացած կայծը
պիտի մարեն , երկրիս վրայ էրկանս
անունը ու մնացորդը չպահելով ։
8 Եւ թագաւորը կնկանը ըսաւ .
Տունդ գնա , ու ես քեզի համար
9 կը պատուիրեմ ։ Ու Թեկուացի
կնիկը թագաւորին ըսաւ . Ով
տէր իմ թագաւոր՝ մեղքը իմ
վրաս ու իմ հօրս տանը վրայ ըլլայ ,
բայց թագաւորը ու անոր աթոռը
10 անպարտ ըլլայ ։ Եւ թագաւորը
ըսաւ . Թէ որ քեզի բան մը ըսող

Ն . Ք . գՔ .
1027

լ Թուոց . լե . 19 ։
խ ա Թագ . ժդ . 45 ։ Գործ . իէ . 34 ։
ծ Դատ . ի . 2 ։
կ Գլ . ժգ . 37 , 38 ։
հ Յոբ . լդ . 15 ։ Եբր . թ . 27 ։
ձ Թուոց . լե . 15 , 25 , 28 ։
ղ Հմր 20 ։ Գլ . ժթ . 27 ։
ճ Կամ՝ պիտի ըլլայ ։
մ Հմր 3 ։

ըլլայ , անիկայ ինծի բեր , ու մէյ-
11 մըն ալ քեզի չդպչիր ։ Եւ անի-
կայ ըսաւ . Թագաւորը շնորհք ը-
նէ , իր Տէր Աստուածը յիշէ , ու
չթողու որ արեան վրէժխնդիրնե-
րը շատնան ապականելու , որ իմ
որդիս մեռցընեն ։ Եւ անիկայ ը-
սաւ . Տէրը կենդանի է որ քու
որդւոյդ գլխէն մազ մը գետինը պի-
12 տի չիյնայ ։ Ան ատենը կնիկը ը-
սաւ . Թող քու աղախինդ իմ տի-
րոջս թագաւորին մէկ խօսք մը
զրուցէ . ու անիկայ՝ Զրուցէ ըսաւ ։
13 Եւ կնիկը ըսաւ . Ուրեմն Աստու-
ծոյ ժողովուրդին վրայ ինչու՞ հա-
մար այդպէս բան կը մտածես . ո-
րովհետև թագաւորը քանի որ իր
աքսորածը ետ չդարձընէ , աս խօս-
քերը խօսելով յանցաւորի պէս
14 կ'ըլլայ . Քանզի մենք ի հարկէ
պիտի մեռնինք , ու գետինը թա-
փած ջուրին կը նմանինք , որ մէյմըն
ալ մէկտեղ չժողվուիր . և Աս-
տուած մէկ մարդու հոգին չառներ ,
հապա միջոցներ կը ճարէ , որ աք-
սորուածը իրմէ աքսորուած չմնայ ։
15 Ու հիմա ես անոր համար իմ թա-
գաւոր տիրոջս աս խօսքը ըսելու
եկայ . քանզի ժողովուրդը զիս
վախցուց . ու քու աղախինդ ըսաւ .
Հիմա թագաւորին հետ խօսիմ .
գուցէ թագաւորը իր աղախինին
16 խօսքը կատարէ . Որովհետև թա-
գաւորը մտիկ ընելով՝ իր աղախինը
պիտի ազատէ ան մարդուն ձեռ-
քէն , որ զիս ու իմ որդիս մէկտեղ
Աստուծոյ ժառանգութենէն ջնջել
17 կ'ուզէ ։ Եւ քու աղախինդ ըսաւ .
Իմ թագաւոր տիրոջս խօսքը մխի-
թարութիւն պիտի ըլլայ . քանզի
իմ թագաւոր տէրս՝ Աստուծոյ
հրեշտակի մը պէս է , որ բարին ու
չարը կը հասկընայ . և քու Տէր
18 Աստուածդ քու հետդ է ։ Ու
թագաւորը պատասխան տուաւ ,
ու կնկանը ըսաւ . Քեզի հար-
ցընելու բանս ինծմէ մի պա-
հեր ։ Ու կնիկը ըսաւ . Իմ
19 թագաւոր տէրս թող զրուցէ ։ Եւ
թագաւորը ըսաւ . Արդեօք աս ա-
մէն բանիս մէջ Յովաբին ձեռքը
քեզի հե՞տ է . ու կնիկը պատաս-
խան տուաւ ու ըսաւ . Ով տէր
իմ թագաւոր , քու անձդ կենդանի
է որ , իմ թագաւոր տիրոջս ըսած
բոլոր խօսքերէն բնաւ մէկը աջ դին
կամ ձախ դին չկրնար խոտորիլ .
քանզի քու ծառադ Յովաբն է ին-
ծի պատուիրողը . ու աս բոլոր
խօսքերը քու աղախնիդ բերանը
20 դնողը՝ անիկայ է . Աս խօսքիս ձևը
դարձընելու համար՝ քու ծառադ
Յովաբը աս բանը ըրաւ . ու իմ

Ն. Ք. Գ. 1027

ժ Հմր 17 ։ Գլ. ժթ. 27 ։

տէրս Աստուծոյ հրեշտակի մը պէս
իմաստուն է՝ բոլոր երկրիս վրայ
եղած բաները գիտնալու ։
21 Եւ թագաւորը Յովաբին ըսաւ .
Ահա հիմա աս բանը ըրի . գնա՛ ,
Աբիսողոմ պատանին ետ դար-
22 ձուր ։ Ան ատենը Յովաբ երեսի
վրայ գետինը ինկաւ , ու անոր
երկրպագութիւն ըրաւ , ու օրհնեց
թագաւորը . և Յովաբ ըսաւ . Քու
ծառադ այսօր գիտցաւ որ քու
աչքերուդ առջևը շնորհք գտայ ,
ո՛վ տէր իմ թագաւոր . քանզի
թագաւորը իր ծառային խօսքը
23 կատարեց ։ Ու Յովաբ ելաւ՝ Գե-
սուր գնաց , ու Աբիսողոմը Երու-
24 սաղէմ բերաւ ։ Եւ թագաւորը
ըսաւ . Թող իր տունը դառնայ ,
ու իմ երեսս չտեսնէ ։ Եւ Աբի-
սողոմ իր տունը դարձաւ , ու թա-
գաւորին երեսը չտեսաւ ։
25 Եւ բոլոր Իսրայէլին մէջ Աբիսո-
ղոմին պէս գեղեցիկ ու գովելի
մարդ մը չկար . անիկայ ոտքին
թաթէն մինչև գլխուն գագաթը
26 արատ մը չունէր ։ Ու երբոր իր
մազերը կը կտրէր , (որովհետև
տարին անգամ մը մազերը կը
կտրէր , քանզի իր վրայ ծանրու-
թիւն կ'ըլլար ,) իր գլխուն մազե-
րը կը կշռէր , ու թագաւորական
կշիռքով երկու հարիւր սիկղ կու
27 գար ։ Եւ Աբիսողոմին իրեք տը-
ղայ՝ ու Թամար անունով մէկ աղ-
ջիկ մը ծնաւ . անիկայ դէմքով
գեղեցիկ կնիկ մըն էր ։
28 Եւ Աբիսողոմ Երուսաղէմի մէջ
լման երկու տարի նստաւ , ու
29 թագաւորին երեսը չտեսաւ ։ Եւ
Աբիսողոմ՝ Յովաբին մարդ խրկեց ,
որ զանիկայ թագաւորին խրկէ .
բայց անիկայ չուզեց անոր երթալ ։
Ու նորէն երկրորդ անգամ մարդ
խրկեց . ու անիկայ երթալ չու-
30 զեց ։ Ան ատենը Աբիսողոմ իր ծա-
ռաներուն ըսաւ . Տեսէ՛ք Յովաբին
արտը՝ որ իմ արտիս մօտն է , ու
անիկայ հոն գարի ունի , գացէ՛ք՝
զանիկայ կրակով այրեցէ՛ք ։ Եւ
Աբիսողոմին ծառաները ան արտը
31 կրակով այրեցին ։ Ու Յովաբ ե-
լաւ՝ Աբիսողոմին տունը գնաց , և
անոր ըսաւ . Ինչո՞ւ համար քու
ծառաներդ իմ արտս կրակով այ-
32 րեցին ։ Ու Աբիսողոմ՝ Յովաբին
ըսաւ . Ահա քեզի մարդ խրկեցի՝ ու
ըսի . Հոս եկուր , քեզ թագա-
ւորին խրկեմ , որ ըսես թէ՝ Գե-
սուրէն ինչո՞ւ եկայ . իմ հոն ըլլալս
ինծի աւելի աղէկ էր . և հիմա
թագաւորին երեսը տեսնեմ . ու
թէ որ իմ վրաս չարութիւն մը
33 կայ , թող զիս մեռցնէ ։ Եւ Յո-
վաբ՝ թագաւորին գնաց , ու
բանը անոր իմացուց . և անիկայ
Աբիսողոմը կանչեց . ու թագաւո-
րին քովը գնաց . և թագաւորին
առջևը երեսի վրայ ինկաւ , ու մինչև
գետինը երկրպագութիւն ըրաւ .
ու թագաւորը Աբիսողոմը համ-
բուրեց ։

ի Գլ. ժգ. 37 ։ — յ Ծն. խգ. 3 ։ Գլ. գ. 13 ։ — ն Ես. ա. 6 ։ — լ Տես Գլ. ժը. 18 ։ — ս Հմր 24 ։

Ն. Ք. Գ. 1027

1025

ն Ծն. լգ. 4 ։ խե. 15 ։ Ղկ. ժե. 20 ։

## ԳԼ. ԺԵ

1 Աբիսողոմ անուշ խօսքերով և մարդասիրութիւն ցուցնելով , Իսրայէլի մարդոց սիրտերը իրեն կը դարձնէ ։ 7 Ուխտ մը կատարելու պատճառով հրաման կ'առնէ Քեբրոն երթալու . 10 ու հոն ապստամբութեան մեծ խորհուրդ մը կ'ընէ ։ 13 Դաւիթ աս լուրին վրայ Երուսաղէմէն կը փախչի ։ 19 Եթթի՝ Դաւիթէն զատուիլ չուզեր ։ 24 Սադովկ ու Աբիաթար՝ տապանակին հետ ետ կը խրկուին ։ 30 Դաւիթ ու իր ժողովուրդը լալով Ձիթենեաց լեռը կ'ելլեն ։ 61 Դաւիթ կը խնդրէ Աստուծմէ որ Աքիտոփելին խորհուրդը խափանուի ։ 32 Քուսի պատուէրներով ետ կը խրկուի ։

1024

1 Ու ասկէ ետքը՝ Աբիսողոմ իրեն
համար կառքեր , ձիեր ու իր
առջևէն վազող յիսուն սուրհան-
2 դակ մարդ պատրաստեց ։ Եւ Ա-
բիսողոմ կանուխ կ'ելլէր , ու դրա-
նը ճամբուն մէկ կողմը կը կայնէր .
և Աբիսողոմ ամէն դատ ունեցող՝
ու դատաստանի համար թագաւո-
րին եկող մարդը կը կանչէր ու կ'ը-
սէր . Դուն ո՞ր քաղաքէն ես . ու
երբոր անիկայ՝ Ծառադ Իսրայէլի
3 ցեղերուն մէկէն եմ կ'ըսէր , Աբիսո-
ղոմ անոր կ'ըսէր . Նայէ , քու
դատդ բանաւոր ու ուղիղ է . բայց
թագաւորին կողմանէ քեզի մտիկ
4 ընող չկայ ։ Եւ Աբիսողոմ կ'ըսէր .
Երանի թէ զիս աս երկրիս վրայ
դատաւոր դնէին . ու ամէն վէճ
կամ դատ ունեցող մարդը ինծի
5 գար , և անոր իրաւունք ընէի ։ Ու
երբոր մէկ մարդ մը մօտենար անոր
երկրպագութիւն ընելու , անիկայ
ձեռքը կ'երկընցընէր , զանիկայ կը
6 բռնէր ու կը համբուրէր ։ Եւ Ա-
բիսողոմ՝ դատաստանի համար
թագաւորին եկող բոլոր Իսրայէլին
այսպէս ընելով , Իսրայէլի մար-
դիկներուն սիրտը իրեն դար-
ձուց ։
7 Ու քառսուն տարին լմննալէն
ետքը՝ Աբիսողոմ ըսաւ թագաւո-
րին . Շնորհք ըրէ , երթամ , ու
Տէրոջը ըրած ուխտս Քեբրոնի մէջ
8 կատարեմ . քանզի ծառադ երբ-
որ Ասորւոց Գեսուրը կը բնակէի ,
ուխտ ըրի ու ըսի . Թէ որ Տէրը
զիս Երուսաղէմ դարձընէ , Տէրոջը
9 ծառայութիւն ընեմ ։ Եւ թա-
գաւորը անոր ըսաւ . Գնա խաղա-
ղութեամբ ։ Ու անիկայ ելաւ
10 Քեբրոն գնաց ։ Եւ Աբիսողոմ
Իսրայէլի բոլոր ցեղերուն լրտեսներ

ա Գլ. ժբ. 11 ։ — բ Գ Թագ. ա. 5 ։ — գ Դատ. թ. 29 ։ — դ Հռով. ժզ. 18 ։ — ե Եբր. դող-ցաւ ։

1023

զ Ըստ ... — է ա Թագ. ժզ. 2 ։ — ը Գլ. ժգ. 38 ։ — թ Ծն. իը. 20, 21 ։

Ն. Ք. ԶԱ. 1023

խրկեց, ու ըսաւ. Փողին ձայնը
լսելնուդ պէս՝ Աբիսողոմ Քեբրոնի
11 մէջ թագաւոր եղաւ, ըսէք։ Ու
Աբիսողոմին հետ՝ Երուսաղեմէն եր-
կու հարիւր մարդ գնաց հրաւի-
րուած. անոնք միամտութեամբ
գացին, ու ամենևին բան մը չէին
12 գիտեր։ Եւ Աբիսողոմ զոհերը ը-
րած ատենը՝ Դաւիթին խորհրդա-
կիցը Գեղոնացի Աքիտոփէլը իր
Գեղոն քաղաքէն կանչել տուաւ.
և դաւաճանութիւնը զօրացաւ, ու
ժողովուրդը երթալով կը շատնար
Աբիսողոմին քովը։
13 Եւ Դաւիթին լրաբեր մը եկաւ
ու ըսաւ. Իսրայէլի մարդիկնե-
րուն սիրտը Աբիսողոմին հետ մէկ
14 եղաւ։ Ան ատենը Դաւիթ՝ Ե-
րուսաղեմի մէջ իր հետը եղող բո-
լոր ծառաներուն ըսաւ. Ելէք
փախչինք. քանզի Աբիսողոմին ե-
րեսէն մեզի ազատութիւն չկայ.
շուտ ըրէք՝ գացէք, չըլլայ որ ա-
նիկայ շուտով մեզի հասնի, ու մեր
վրայ չարիք հասցընէ, ու քաղաքը
15 սուրի բերնէ անցընէ։ Եւ թա-
գաւորին ծառաները թագաւորին
ըսին. Մեր տէր թագաւորը ինչ
որ արժան համարի, ահա քու ծա-
ռաներդ պատրաստ ենք ընելու։
16 Ու թագաւորը և անոր ետևէն
անոր բոլոր տունը ելաւ. ու թա-
գաւորը իր հարճերէն տասը կնիկ
թողուց, որ տանը մէջ պահպանու-
17 թիւն ընեն։ Եւ թագաւորը ու
անոր ետևէն բոլոր ժողովուրդը ե-
լաւ. ու անոնք հեռու տեղ մը
18 կայնեցան։ Եւ անոր բոլոր ծա-
ռաները ու բոլոր Քերեթիները և
բոլոր Փելեթիները անոր քովէն
կ'անցնէին. ու անոր հետը Գեթէն
եկած բոլոր Գեթացիները՝ վեց հա-
րիւր մարդ թագաւորին առջևէն
19 կ'անցնէին։ Եւ թագաւորը Գե-
թացի Եթթիին ըսաւ. Ինչո՞ւ հա-
մար դուն ալ մեզի հետ պիտի եր-
թաս. դարձիր, ու թագաւորին
հետը նստէ. քանզի դուն օտարա-
կան ես. ու նաև եղած տեղդ պան-
20 դուխտ ես։ Դուն երէկ եկար, ու
այսօր ես քեզ տեղէդ խախտե՞մ,
որ ինծի հետ երթաս. ահա ես
կ'երթամ, ուր որ պիտի երթամ.
դուն դարձիր, ու քու եղբայրներդ
ալ դարձուր. ողորմութիւնը ու
ճշմարտութիւնը քու հետդ ըլլայ։
21 Ու Եթթի՝ թագաւորին պատաս-
խան տուաւ, ու ըսաւ. Տէրը
կենդանի է, ու իմ թագաւոր
տէրս ալ կենդանի է, որ իմ թա-
գաւոր տէրս ուր որ ըլլայ, թէ
մահուան մէջ և թէ կենդանու-
թեան մէջ՝ քու ծառադ ալ հոն
22 պիտի ըլլայ։ Եւ Դաւիթ՝ Եթ-
թիին ըսաւ. Ուրեմն եկուր անցիր.
ու Գեթացի Եթթին իր հետը ե-
ղող բոլոր մարդիկներովը ու բոլոր
23 ընտանիքներովը անցաւ։ Եւ բո-
լոր երկիրը մեծ ձայնով կու լար.
ու բոլոր ժողովուրդը կ'անցնէր. և
թագաւորը Կեդրոն հեղեղատէն
կ'անցնէր. ու բոլոր ժողովուր-
դը դէպ 'ի անապատին ճամբան
կ'անցնէին։
24 Եւ ահա Սադովկն ալ՝ ու անոր
հետ բոլոր Ղևտացիները Աստուծոյ
ուխտին տապանակը կը տանէին.
և Աստուծոյ տապանակը կայնե-
ցուցին, ու մինչև որ բոլոր ժողո-
վուրդը քաղաքէն ելաւ լմնցաւ,
Աբիաթար վեր կը մատուցա-
25 նէր։ Եւ թագաւորը Սադովկին
ըսաւ. Աստուծոյ տապանակը քա-
ղաքը դարձուր. թէ որ Տէրոջը
առջևը շնորհք գտնեմ, ան ատե-
նը զիս ետ պիտի դարձընէ, ու
զանիկայ ու անոր բնակարանը ին-
26 ծի պիտի ցուցընէ. Բայց թէ որ
ինծի այսպէս ըսէ. Քեզի չեմ
հաւնիր. ահա ես հոս եմ. թող
աչքին հաճոյ երևցածին պէս թող
27 ընէ ինծի։ Եւ թագաւորը Սա-
դովկ քահանային ըսաւ. Դուն
տեսանող չե՞ս. խաղաղութեամբ
քաղաքը դարձիր, ու քու որդիդ
Աքիմաասը՝ ու Աբիաթարին որդին
Յովնաթանը՝ ձեր երկու որդինե-
28 րը ձեզի հետ։ Ահա ես անապա-
տին դաշտերուն մէջ պիտի սպա-
սեմ, մինչև որ ձեզմէ լուր մը առ-
29 նեմ։ Եւ Սադովկ ու Աբիաթար՝
Աստուծոյ տապանակը Երուսաղեմ
դարձուցին, ու անոնք հոն մնացին։
30 Եւ Դաւիթ Ձիթենեաց լեռնէն
վեր կ'ելլէր, ու ելլելով կու լար. և
գլուխը ծածկեր էր, ու անիկայ
բոկոտն կը քալէր. և անոր հետ
եղող բոլոր ժողովուրդն ալ՝ ա-
մէնքը իրենց գլուխը ծածկեր էին,
31 ու լալով կ'ելլէին։ Եւ Դաւիթին
պատմեցին ու ըսին. Աքիտոփէլը
Աբիսողոմին հետ դաւաճանութիւն
ընողներուն մէջն է։ Ու Դաւիթ
ըսաւ. Ով Տէր՝ կ'աղաչեմ, Աքի-
տոփէլին խորհուրդը խափանէ։
32 Ու երբոր Դաւիթ ան բլուրը հա-
սաւ, ուր որ Աստուծոյ երկրպա-
գութիւն ըրաւ, ահա Արաքացի
Քուսին հանդերձները պատռած ու
գլխուն վրայ հող դրած՝ զանիկայ
33 դիմաւորեց։ Եւ Դաւիթ անոր ը-
սաւ. Թէ որ իմ հետս գաս, ինծի
34 բեռ մը կ'ըլլաս. Բայց թէ որ քա-
ղաքը դառնաս, ու Աբիսողոմին
ըսես որ, Ով թագաւոր՝ ես քու
ծառադ պիտի ըլլամ. առաջուց

Ն. Ք. ՂՔ.
1023

քու հօրդ ծառան էի, ու հիմա
քու ծառադ եմ. ան ատենը Աքի-
տոփէլին խորհուրդը ինծի համար
35 կրնաս ցրուել։ Եւ ահա Սադովկ ու
Աբիաթար քահանաները հոն քեզի
հետ են. ու թագաւորին տունէն
ինչ որ լսես, [ա]Սադովկ ու Աբիա-
թար քահանաներուն պատմես։
36 Ահա հոն [բ]անոնց երկու որդիները՝
Սադովկին որդին Աքիմաաս ու Ա-
բիաթարին որդին Յովնաթանը՝ ի-
րենց հետն են. ու ամէն լսած խօս-
քերնիդ անոնց ձեռքովը ինծի ի-
37 մացընէք։ Եւ [գ]Դաւիթին բարե-
կամը Քուսի՝ քաղաքը մտաւ. ու
[դ]Աբիսողոմն ալ Երուսաղէմ *մը-
տաւ։

ա Գլ. ԺԵ. 15, 16։
բ Վեր 27։
գ Գլ. ԺԶ. 16։ Ա Մն. ԻԷ. 33։
դ Գլ. ԺԶ. 15։
* Կամ՝ կը մտնէր։

## ԳԼ. ԺԶ

1 Սիբա ընծաներով ու խորամանկութիւն բանեցնելով՝ իր տիրոջը ստացուածքին տէր կ'ըլլայ։ 5 Սեմէի՝ Բաւուրիմի քովը Դաւիթը կ'անիծէ։ 9 Դաւիթ համբերութիւնով վրէժխնդիր չըլլար, ու ուրիշներն ալ վրէժխնդրութենէ կ'արգիլէ։ 15 Քուսի՝ Աբիսողոմին խորհրդակից կ'ըլլայ։ 20 Աքիտոփէլին խորհուրդը։

1 Ու [ա]երբոր Դաւիթ լերանը գլու-
խէն քիչ մը անցեր էր, ահա
[բ]Մեմփիբոսթէին ծառան Սիբա
զանիկայ դիմաւորեց, հետը երկու
էշ սանձուած, որոնց վրայ երկու
հարիւր հաց, հարիւր ողկոյզ չա-
միչ, ու հարիւր †ամառնային
պտուղ", ու տիկ մը գինի բեռ-
2 նաւորեր էր։ Եւ թագաւորը Սի-
բային ըսաւ. Ասոնք ‡ի՞նչ պիտի
ընես"։ Ու Սիբան ըսաւ. Էշերը
թագաւորին տանը համար է, որ
անոնց վրայ հեծնեն. և հացը ու ա-
մառնային պտուղները մանչերուն
համար է, որ ուտեն. ու գինին ալ
[գ]անապատին մէջը նուաղածներուն
3 համար է, որ խմեն։ Եւ թագա-
ւորը ըսաւ. Հապա քու տիրոջդ
որդին ո՞ւր է։ [դ]Ու Սիբա՝ թա-
գաւորին ըսաւ. Ահա անիկայ Ե-
րուսաղէմ կը նստի. քանզի ըսաւ
թէ՝ Այսօր Իսրայէլի տունը իմ
հօրս թագաւորութիւնը ինծի պի-
4 տի դարձընէ։ [ե]Ան ատենը թագա-
ւորը Սիբային ըսաւ. Ահա Մեմ-
փիբոսթէին ամէն ունեցածը քեզի
ըլլայ։ Ու Սիբա ըսաւ. Ո՛վ տէր
իմ թագաւոր՝ ‖շնորհակալ եմ".
Թող քու առջեւդ շնորհք գտնեմ։
5 Եւ Դաւիթ թագաւորը մինչև
Բաւուրիմը եկաւ. և ահա անկէ՝
Սաւուղին տանը ազգատոհմէն
[զ]Գերայի որդին Սեմէի անունով
մարդ մը ելաւ, ու ելլելով կ'անի-
6 ծէր. Եւ Դաւիթին՝ ու Դաւիթ
թագաւորին բոլոր ծառաներուն
քար կը նետէր. ու բոլոր ժողո-
վուրդը, ու բոլոր զօրաւոր մար-

ա Գլ. ԺԵ. 30, 32։
բ Գլ. Թ. 2։
† Կամ՝ չարոց չոր թուզ,
‡ Եբր. ի՞նչ են քեզի։
գ Գլ. ԺԵ. 23։ ԺԷ. 29։
դ Գլ. ԺԹ. 27։
ե Առակ. ԺԸ. 13։
‖ Եբր. երկրպագութիւն կ'ընեմ.
զ Գլ. ԺԹ. 16։ Գ Թագ. Բ. 8, 44։

դիկները թագաւորին աջ դիէն ու
7 ձախ դիէն կ'երթային. Եւ Սեմէի
անոր անէծք տուած ատենը՝ այս-
պէս կ'ըսէր. Ելի՛ր, ելի՛ր ո՛վ ա-
րիւնահեղ մարդ, [է]ո՛վ անօրէն
8 մարդ. Տէրը [ը]Սաւուղին տանը
բոլոր արիւնը [թ]քու վրադ դարձուց,
որ անոր տեղը թագաւոր եղար.
ու Տէրը թագաւորութիւնը քու
որդւոյդ Աբիսողոմին ձեռքը
տուաւ. և ահա քու չարիքդ քեզի
հասաւ. քանզի դուն արիւնահեղ
9 մարդ մըն ես։ Եւ Շարուհեայի որ-
դին Աբեսսան՝ թագաւորին ըսաւ.
Աս [ժ]մեռած շունը ինչո՞ւ համար
[ի]իմ տիրոջս թագաւորին անէծք
տայ. թող տուր անցնիմ, ու
10 անոր գլուխը առնեմ։ Բայց թա-
գաւորը ըսաւ. Ո՛վ Շարուհեայի
որդիք, [լ]դուք ինծի հետ ի՞նչ բան
ունիք. թող տուէք որ այսպէս
անէծք տայ. քանզի [խ]Տէրը ըսաւ
անոր. Դաւիթը անիծէ. ու ո՞վ
կրնայ ըսել թէ, Ինչո՞ւ համար
11 այդպէս ըրիր։ Եւ Դաւիթ՝ Ա-
բեսսային ու իր բոլոր ծառանե-
րուն ըսաւ. Ահա [ծ]իմ երանքէս
ելլող [կ]որդիս իմ հոգիս կը փնտռ-
ռէ, ո՞ւր մնաց աս Բենիամինեանը.
թո՛ղ տուէք զանիկայ, որ անիծէ.
12 քանզի Տէրը ըսաւ անոր։ Գուցէ
Տէրը [ձ]իմ նեղութեանս նայի. ու
ասօրուան անոր տուած անէծքին
տեղը՝ Տէրը ինծի [ղ]բարիք հատու-
13 ցանէ։ Եւ Դաւիթ իր մարդիկնե-
րուն հետ ճամբան կ'երթար, ու
Սեմէի դիմացէն լեռանը քովէն
կ'երթար, և անէծք տալով՝ քարեր
նետելով՝ ու հող ցանելով կ'եր-
14 թար։ Եւ թագաւորը ու անոր
հետ եղող բոլոր ժողովուրդը յոգ-
նած եկան, ու հոն հանգչեցան։
15 Եւ [ճ]Աբիսողոմ ու բոլոր ժողո-
վուրդը՝ Իսրայէլի մարդիկը՝ Երու-
սաղէմ մտան. ու Աքիտոփէլ ա-
16 նոր հետն էր։ Ու երբոր [մ]Դաւի-
թին բարեկամը Արաքացի Քուսին
Աբիսողոմին քովը գնաց, Քուսի
ըսաւ Աբիսողոմին. Կեցցէ՛ արքայ,
17 կեցցէ՛ արքայ։ Եւ Աբիսողոմ՝
Քուսիին ըսաւ. Բարեկամիդ վրայ
ունեցած սէրդ ասիկա՞ է. [յ]ինչո՞ւ
18 բարեկամիդ հետ չգացիր։ Եւ Քու-
սի ըսաւ Աբիսողոմին. Չէ՛. հապա
Տէրոջը ու աս ժողովուրդին և Իս-
րայէլի բոլոր մարդիկներուն ընտ-
րածը ո՛վ որ ըլլայ, ես անորը պիտի
ըլլամ, ու անոր հետ պիտի նըս-
19 տիմ։ Մէյմըն ալ՝ [ն]ես որո՞ւն
ծառայութիւն պիտի ընեմ. անոր
որդւոյն չէ՞. ինչպէս որ քու հօրդ
առջևը ծառայեցի, անանկ ալ քու
առջևդ պիտի ըլլամ։

Ն. Ք. ՂՔ.
1023

է Բ Օր. ԺԳ. 13։
ը Տե՛ս Գլ. Ա. 16։ Գ. 28, 29։ Դ. 11, 12։
թ Դատ. Թ. 24, 56, 57. Գ Թագ. Բ. 32, 33։
ժ Ա Թագ. ԻԴ. 15։ Գլ. Թ. 8։
ի Ել. ԻԲ. 28։
լ Գլ. ԺԹ. 22։ Ա Պետ. Բ. 23։
խ Տե՛ս Դ Թագ. ԺԸ. 25։ Ողբ. Գ. 38։
ծ Հռով. Թ. 20։
կ Ծն. ԺԵ. 4։
հ Գլ. ԺԲ. 11։
ձ Ծն. ԻԹ. 32։ Ա Թագ. Ա. 11։ Սաղ. ԻԵ. 18։
ղ Հռով. Ը. 28։
ճ Գլ. ԺԵ. 37։
մ Գլ. ԺԵ. 37։
յ Գլ. ԺԹ. 25։ Առակ. ԺԷ. 17։
ն Գլ. ԺԵ. 34։

Ն․ Ք․ ԳՔ․
1023

20 Եւ Աբիսողոմ ըսաւ Աքիտոփե-
լին. Խորհուրդ ըրէք՝ թէ ինչ ը-
21 նելու ենք ։ Ու Աքիտոփէլ ըսաւ
Աբիսողոմին. Քու հօրդ ՚հարճե-
րուն մտիր, որոնք անիկայ տանը
պահպանութիւնը ընելու համար
թողուց. ու երբոր բոլոր Իսրայէլը
լսէ որ դուն քու հօրդ "ատելի ե-
ղար, ան ատենը բոլոր քեզի հետ
եղողներուն ՚ձեռքերը պիտի ու-
22 ժովնայ ։ Ուստի տանիքին վրայ
Աբիսողոմին համար վրան կանգնե-
ցին. և Աբիսողոմ ՚բոլոր Իսրա-
յէլին աչքերուն առջեւ իր հօրը
23 հարճերուն մտաւ ։ Ու ան օրերը
Աքիտոփելին տուած խորհուրդը
այնպէս էր, ինչպէս որ մէկը Աս-
տուծոյ խօսքը հարցնէր. Աքի-
տոփելին ամէն խորհուրդը՝ ՚թէ
Դաւիթին քով և թէ Աբիսողո-
մին քով այնպէս էր ։

ՙ Գլ․ ժե․ 16 ։ ի․ 3 ։
" Ծն․ լդ․ 30 ։ Թագ․ ժգ․ 4 ։
՚ Գլ․ բ․ 7 ։ Զաք․ ը․ 13 ։
՚ Գլ․ ժբ․ 11, 12 ։
՚ Գլ․ ժե․ 12 ։

## ԳԼ. ԺԷ

1 Քուսիին յաջողակութեամբը Աքիտոփելին խորհուրդը կը մերժուի՝ Աստուծոյ նախասահմանութեանը համեմատ ։ 15 Դաւիթին գաղտուկ կերպով լուր կը խրկուի ։ 23 Աքիտոփէլ ինքզինքը կը կախէ ։ 25 Ամասայի զօրագլուխ կ'ըլլայ ։ 27 Մանայիմի մէջ Դաւիթին պաշար կը բերեն ։

1 Եւ Աքիտոփէլ ըսաւ Աբիսողոմին.
Հիմա տասուերկու հազար մարդ
ընտրեմ ու ելլեմ, և աս գիշեր
2 Դաւիթին ետեւէն իյնամ ։ Ու ա-
նիկայ քանի որ "յոգնած ու ձեռ-
քերը թուլցած է, անոր վրայ հաս-
նիմ, ու վախցընեմ զանիկայ, որ
անոր հետ եղող ժողովուրդը փախ-
չի. ու ‡մինակ թագաւորը զար-
3 նեմ ։ Այսպէս բոլոր ժողովուր-
դը քեզի պիտի դարձընեմ. քան-
զի քու փնտռած մարդդ [illegible]
[illegible]՝ ամէնը ձեռքդ անցած կը
սեպուի. ու բոլոր ժողովուրդը
4 խաղաղութեան մէջ կ'ըլլայ ։ Եւ
աս խօսքը Աբիսողոմին աչքին. ու
Իսրայէլի բոլոր ծերերուն աչքին
*հաճոյ երեւցաւ ։

5 Եւ Աբիսողոմ ըսաւ. Հիմա Ա-
րաքացի Քուսին ալ կանչեցէք.
†որ անոր խորհուրդն ալ" լսենք ։
6 Ու երբոր Քուսի Աբիսողոմին քովը
եկաւ, Աբիսողոմ անոր հետ խօսե-
ցաւ ու ըսաւ. Աքիտոփէլը ասանկ
բան մը ըսաւ. արդեօք անոր խօս-
քը ‡ընե՞նք՝ թէ չէ, դուն խօսէ" ։
7 Եւ Քուսի՝ Աբիսողոմին ըսաւ. Ա-
քիտոփելին տուած խորհուրդը աս
8 անգամ աղէկ չէ ։ Եւ Քուսի ըսաւ.
Դուն գիտես որ քու հայրդ ու անոր
մարդիկները զօրաւոր են. ու ‡սրը-
տերնին պղտոր է, դաշտի մէջ ‡ձա-
գերը կորսնցուցած արջու պէս.
և քու հայրդ պատերազմող մարդ

" Տեառ Օր․ իե․ 18 ։ Գլ․ ժզ․ 14 ։
‡ Զաք․ ժգ․ 7 ։
* Եբր․ ուղիղ․ ա Թագ․ ժը․ 20 ։
† Եբր․ ինչ որ կայ անոր բերանը
‡ Կամ՝ ընե՞նք․ թէ չէ՝ դուն ալ խօսէ ։
‡ Դատ․ ժը․ 25 ։
‡ Ովս․ ժգ․ 8 ։

մըն է, ու գիշերը ժողովուրդին հետ
9 չկենար ։ Եւ հիմա անիկայ կամ
փոսի մը մէջ՝ կամ ուրիշ տեղ մը
պահուած է. ու թէ որ առջի ան-
գամ ասոնցմէ իյնալու ըլլան, ամէն
լսողը պիտի ըսէ թէ՝ Աբիսողոմին
ետեւէն գացող ժողովուրդը կոտ-
10 րուեր է. Ան ատենը առիւծի պէս
սիրտ ունեցող զօրաւոր մարդը ան-
գամ բոլորովին ‡պիտի թուլնայ.
քանզի բոլոր Իսրայէլը գիտէ որ քու
հայրդ զօրաւոր է, ու անոր հետ
եղողները ուժի տէր մարդիկներ են.
11 Աս պատճառաւ ես քեզի խորհուրդ
կու տամ՝ որ բոլոր Իսրայէլը ՚Դա-
նէն մինչեւ Բերսաբէէ՝ ‡ծովեզերքը
եղող աւազին պէս բազմութեամբ
քու քովդ ժողվուին. դուն ալ ան-
ձամբ անոնց մէջը [illegible] եր-
12 թաս ։ Եւ այսպէս անոր վրայ եր-
թանք՝ անիկայ ուր տեղ որ գըտ-
նուի, ու անոր վրայ հասնինք՝ ինչ-
պէս որ ցօղը գետնի վրայ կիջնէ.
և անկէ ու անոր հետ եղող բոլոր
13 մարդիկներէն մէկը ողջ չմնայ ։ Եւ
թէ որ քաղաքի մը մէջ դոցուի, ան
քաղաքը՝ բոլոր Իսրայէլը չուաններ
տանի. ու զանիկայ մինչեւ հեղեղա-
տը քաշենք. այնպէս որ՝ հոն մէկ
14 պզտիկ քար մը անգամ չմնայ ։ Եւ
Աբիսողոմ ու բոլոր Իսրայէլի մար-
դիկները ըսին Արաքացի Քուսիին
խորհուրդը Աքիտոփելին խորհուր-
դէն աղէկ է. Քանզի ՙՏէրը Աքի-
տոփելին աղէկ խորհուրդը ցրուե-
լու հրաման տուեր էր որ Տէրը
Աբիսողոմին վրայ չարիք հասցընէ ։
15 ՚Եւ Քուսի՝ Սադովկ ու Աբիա-
թար քահանաներուն ըսաւ. Աքի-
տոփէլը Աբիսողոմին ու Իսրայէ-
լի ծերերուն այս ինչ խորհուրդը
տուաւ. ես ալ այս ինչ խորհուր-
16 դը տուի. Հիմա շուտով մարդ
խրկեցէք, ու Դաւիթին իմացու-
ցէք՝ ու ըսէք Գիշերը ՚անապա-
տին դաշտերուն մէջ մի կենար
հապա շուտով անցիր. չըլլայ որ
թագաւորը ու անոր հետ եղող բո-
լոր ժողովուրդը ‖յանկարծ զար-
17 նուին" ։ ‡Եւ Յովնաթան ու Աքի-
մաաս ՚Ռովգելի աղբիւրին քովը
կայներ էին. քանզի չէին կրնար
քաղաքը մտնել ու երեւնալ և ա-
ղախինը գնաց ու անոնց պատմեց
և անոնք գացին ու Դաւիթ թա-
18 գաւորին իմացուցին ։ Եւ մանչ
մը տեսաւ զանոնք, ու Աբիսողոմին
պատմեց. բայց անոնք երկուքը
մէկտեղ շուտով գացին, ու ‡Բա-
ւուրիմը մէկ մարդու մը տունը մը-
տան. և անիկայ իր գաւիթին մէ-
ջը ջրհոր մը ունէր. ու անոնք հոն
19 իջան ։ Եւ ‡կնիկը մէկ ծածկոց մը

Ն․ Ք․ ԳՔ․
1023

‡ Յես․ բ․ 11 ։
՚ Դատ․ ի․ 1 ։
‡ Ծն․ իբ․ 17 ։
ՙ Գլ․ ժե․ 31, 34 ։
՚ Գլ․ ժե․ 35 ։
՚ Գլ․ ժե․ 28 ։
‖ Եբր․ կըլլուին ։
‡ Գլ․ ժե․ 27, 36 ։
՚ Յես․ ժե․ 7 ։ ժը․ 16 ։
‡ Գլ․ ժզ․ 5 ։
‡ Յես․ Յես․ բ․ 6 ։

Ն. Ք. Գ.Ք.
1023

առաւ, ջրհորին բերնին վրայ փռեց.
ու անոր վրայ ձաւար տարածեց,
20 ու բանը չհասկցուեցաւ. Եւ Ա-
բիսողոմին ծառաները այն կնկանը
տունը մտան, ու ըսին. Աքիմաա-
սը ու Յովնաթանը ո՞ւր են։ Եւ
¹կնիկը անոնց ըսաւ. *Ջուրին
անդիի կողմը անցան։ Ու անոնք
փնտռեցին ու չգտան, ու Երուսա-
21 ղէմ դարձան։ Եւ անոնց երթա-
լէն ետքը՝ ջրհորէն ելան, ու գացին
Դաւիթ թագաւորին իմացուցին.
և Դաւիթին ըսին. ²Ելէք, ու
շուտով ջուրէն անցէք. քանզի
Աքիտոփէլը ձեզի համար ասանկ
22 խորհուրդ մը ըրաւ։ Եւ Դաւիթ
ու անոր հետ եղող բոլոր ժողո-
վուրդը ելան՝ ու Յորդանանէն ան-
ցան. ու մինչև առաւօտեան լոյսը
Յորդանանէն չանցած մարդ մը չը-
մնաց։
23 Եւ Աքիտոփէլ երբոր տեսաւ որ
իր խորհուրդը չկատարուեցաւ, իր
իշուն համետը դրաւ, ու ելաւ ³իր
քաղաքը ու իր տունը գնաց. և
⁴իր տանը համար պատուէր տուաւ,
ու ⁵ինքզինքը խեղդեց ու մեռաւ, և
իր հօրը գերեզմանը թաղուեցաւ։
24 Եւ Դաւիթ ⁶Մանայիմը հասաւ։
Աբիսողոմն ալ բոլոր Իսրայէլի մար-
դիկներուն հետ Յորդանանէն ան-
25 ցաւ։ Եւ Աբիսողոմ՝ Յովաբին
տեղը՝ Ամեսային դրաւ զօրքին վը-
րայ. ու Ամեսային՝ Յեթեր անու-
նով ⁷Իսրայէլացիի մը որդի էր, որ
անիկայ Յովաբին մօրը Շարուհեա-
յին քոյրը՝ Նաասին աղջիկը ⁸Աբի-
26 գեան առեր էր։ Եւ Իսրայէլը Ա-
բիսողոմին հետ՝ Գաղաադու երկրին
մէջ բանակեցաւ։
27 Ու երբոր Դաւիթ Մանայիմը
եկաւ, Ամմոնի որդւոցը Ռաբբայէն
⁹Նաասի որդին Սոբին, ու Լադա-
բարէն ¹⁰Ամիէլի որդին Մաքիրը, և
Ռովգելիմէն ¹¹Գաղաադացի Բերզե-
28 լին՝ Անկողիններ, կոնքեր, հողէ
ամաններ, ցորեն, գարի, ալիւր,
ու բոհրած ցորեն, ու բակլայ, և
29 ոսպ, ու բոհրած սիսեռ, Ու մեղր,
և կոգի, ու ոչխարներ, և կովու
պանիր, Դաւիթին ու անոր հետ
եղող ժողովուրդին բերին որ ու-
տեն. քանզի ըսին. ժողովուրդը
¹²անապատին մէջ անօթի՝ յոգնած
ու ծարաւած է։

Margin notes: ¹ Տես Եւ. ա. 19. Յես. բ. 4 5. — * Եբր. Ջուրի առուին — ² Հմր 15. 16. — ³ Գլ. ԺԶ. 12. — ⁴ Դ Թագ. Ի. 1. — ⁵ Մատ. ԻԷ. 5. — ⁶ Ծն. ԼԲ. 2. Յես. ԺԳ. 26. Գլ. Բ. 8. — ⁷ Կամ՝ Իսմայէլացիի տես Ա Մն. Բ. 17. — ⁸ Ա Մն. Բ. 16. 17. — ⁹ Տես Գլ. Ժ. 1. ԺԲ 30. — ¹⁰ Գլ. Թ. 4. — ¹¹ Գլ. ԺԹ. 31. 32. Գ Թագ. Բ. 7. — ¹² Գլ. ԺԶ. 2.

## ԳԼ. ԺԸ

1 Դաւիթ՝ պատերազմի գացող զօրքերը այցքէ անցընելով՝ անոնց պատուէր կու տայ իր որդւոյն Աբիսողոմին համար։ 6 Իսրայէլացիք Եփրեմի անտառին մէջ չարաչար կը զարնուին։ 9 Աբիսողոմ բեւեկնիէ մը կախուելով Յովաբէն կը մեռցուի. ու փոսի մը մէջ կը ձգուի։ 18 Աբիսողոմին արձանը։ 19 Աքիմաաս և Քուսի՝ Դաւիթին լուր կը բերեն։ 33 Դաւիթ Աբիսողոմին համար սուգ կ՚ընէ։

1 Եւ Դաւիթ իր հետը եղող զօրքը
համրեց, ու անոնց վրայ հա-
զարապետներ ու հարիւրապետներ
2 դրաւ։ Եւ Դաւիթ զօրքին եր-
րորդ մասը՝ Յովաբին ձեռքը, ու
երրորդ մասը՝ Յովաբին եղբօրը
Շարուհեան Աբեսսային ձեռքը,
¹³ու երրորդ մասը՝ Գեթացի Եթ-
թիին ձեռքը յանձնեց. և թագա-
ւորը ժողովուրդին ըսաւ. Անպատ-
ճառ ես ալ ձեզի հետ պիտի ելլեմ։
3 ¹⁴Բայց ժողովուրդը ըսաւ. Մի՛ ել-
լեր. քանզի թէ որ մենք փախչելու
ըլլանք, անոնք մեզի համար հոգ չեն
ըներ. ու թէև կէսերնիս մեռնի,
անոնք զանիկայ բանի մը տեղ չեն
դներ. բայց դուն մեր տասը հա-
զարին չափ ես. ու հիմա աղէկը
ան է որ, դուն մեզի քաղաքէն օգ-
4 նութիւն ընես։ Եւ թագաւորը
անոնց ըսաւ. Ձեր աչքերուն հաճոյ
երևցածը պիտի ընեմ. ու թագա-
ւորը դրանը քով կայնեցաւ, և բո-
լոր զօրքը հարիւրներով ու հազար-
5 ներով կ՚ելլէին։ Ու թագաւորը
Յովաբին և Աբեսսային ու Եթթի-
ին պատուիրելով ըսաւ. Ինծի հա-
մար Աբիսողոմ պատանիին խնայե-
ցէք։ ¹⁵Ու երբոր թագաւորը Ա-
բիսողոմին համար բոլոր զօրավար-
ներուն պատուիրեց, բոլոր զօրքե-
րը լսեցին։
6 Եւ զօրքը դաշտը ելաւ Իսրայէ-
լին դէմ դնելու համար. ու պա-
տերազմը ¹⁶Եփրեմի անտառին մէջը
7 եղաւ։ Եւ հոն Իսրայէլին զօրքերը՝
Դաւիթին ծառաներուն առջեր
յաղթուեցան. ու հոն այն օրը մեծ
կոտորած եղաւ, քսան հազար
8 մարդ ինկաւ։ Եւ հոն պատերազմը
բոլոր երկրին վրայ տարածուեցաւ,
ու այն օրը անտառը՝ սուրին ջար-
դածէն աւելի ժողովուրդ ջարդեց։
9 Եւ Աբիսողոմ՝ Դաւիթին ծառա-
ներուն հանդիպեցաւ. ու Աբիսո-
ղոմ ջորիի վրայ հեծեր էր. և ջորին
մեծ մեծ բեւեկնիի մը թաւ ոստերուն
տակը մտաւ. ու անոր գլուխը
բեւեկնիէն բռնուեցաւ, ու երկինքի
ու երկրի մէջ կախուած մնաց. և
10 ջորին տակէն անցաւ գնաց։ Ու
մէկ մարդ մը զանիկայ տեսնելով՝ Յո-
վաբին պատմեց, ու ըսաւ. Ահա
Աբիսողոմը բեւեկնիէ մը կախուած
11 տեսայ։ Եւ Յովաբ իրեն լուր բե-
րող մարդուն ըսաւ. Որովհետև
զանիկայ տեսար, ինչո՞ւ համար զա-
նիկայ հոն գետինը չզարկիր. ան ա-
տենը քեզի տասը սիկղ արծաթ ու
12 մէկ գօտի մը կու տայի։ Եւ այն
մարդը Յովաբին ըսաւ. Թէ որ իմ

Margin notes: Ն. Ք. Գ.Ք. 1023 — ¹³ Գլ. ԺԵ. 19. — ¹⁴ Գլ. ԻԱ. 17. — ¹⁵ Հմր 12. — ¹⁶ Յես. ԺԷ. 15, 18.

Ն. Ք. ԴՔ. 1023

ափս հազար սիկղ կշռուքով ալ ար-
ծաթ դրուէր, թագաւորին որ-
դւոյն ձեռքս չէի երկընցըներ.
ե քանզի մենք լսեցինք, երբոր Թա-
գաւորը քեզի ու Աբեսսային ու
Եթթիին պատուիրեց՝ ըսելով.
*Ամէն մէկերնիդ" Աբիսողոմ պա-
13 տանիին հոգ տարէք. Եթէ ոչ՝
† պարապ տեղը իմ կեանքս վտանգի
մէջ պիտի դնէի". քանզի բնաւ բան
մը Թագաւորէն գաղտուկ չմնար.
ու դուն ալ ինծի դէմ պիտի կենա-
14 յիր: Եւ Յովաբ ըսաւ. Ես քու
առջեւդ այսպէս ժամանակ չեմ
անցըներ. ու իր ձեռքը իրեք նետ
առաւ, ու անոնցմով Աբիսողոմին
սիրտը խոցեց, որ անիկայ տակա-
15 ւին բեւեկնիին վրայ ողջ էր: Եւ
Յովաբին զինակիրները տասը մանչ
չորս կողմը պաշարելով՝ Աբիսո-
ղոմը զարկին, ու զանիկայ մեռ-
16 ցուցին: Եւ Յովաբ փող հնչե-
ցուց, ու զօրքը՝ Իսրայէլը հալա-
ծելէն ետ դարձաւ. քանզի Յովաբ
17 զօրքը զսպեց: Ու Աբիսողոմը ա-
ռին, և զանիկայ անտառին մէջը
մէկ մեծ փոսի մը մէջ նետեցին, ու
ղ անոր վրան խիստ մեծ քարակոյտ
մը դիզեցին. և բոլոր Իսրայէլը
փախաւ՝ ամէն մէկը իր վրանը:
18 Եւ Աբիսողոմ իր կենդանու-
թեան ատենը մէկ արձան մը առեր
էր, ու զանիկայ իրեն համար
ե Թագաւորի հովիտին մէջը կանգ-
ներ էր, ըսելով թէ՝ զ Որդի չու-
նիմ որ իմ անուանս յիշատակը
պահէ. ու ան արձանը իր անու-
նովը կոչեր էր, որ անիկայ մինչև
աս օրս Աբիսողոմին ‡ արձանը կ'ը-
սուի:
19 Եւ Սադովկի որդին Աքիմաասը
ըսաւ. Հիմա վազեմ, ու Թագա-
ւորին աւետիս տանիմ, որ Տէրը
անոր իրաւունք ըրաւ, ու զանիկայ
իր թշնամիներուն ձեռքէն ազատեց:
20 Ու Յովաբ անոր ըսաւ. Դուն այսօր
աւետիս տանելու մարդ չես. դուն
մէկ ուրիշ օր մը աւետիս տար,
բայց այսօր աւետիս մի՛ տանիր.
քանզի Թագաւորին որդին մեռաւ:
21 Եւ Յովաբ՝ Քուսիին ըսաւ. Գնա՛
տեսածդ Թագաւորին պատմէ՛. ու
Քուսի՝ Յովաբին երկրպագութիւն
22 ըրաւ, և վազելով գնաց: Ու
Սադովկին որդին Աքիմաասը նորէն
Յովաբին ըսաւ. Ինչ և իցէ հրա-
մա՛ն տուր՝ որ ես ալ Քուսիին ե-
տեւէն վազեմ: Ու Յովաբ ըսաւ.
Ինչո՞ւ վազես՝ որդի՛ս, որովհետև
23 աւետիս մը չունիս տանելու: Ե-
անիկայ ըսաւ. Ինչ և իցէ վազեմ.
ու անոր ըսաւ. Վազէ: Եւ Ա-
քիմաաս դաշտին ճամբովը վազեց,
24 ու Քուսիէն անցաւ: Եւ Դաւիթ
երկու դռներուն մէջը կը նստէր.
ու ը դէտը դրանը տանիքին վրայ
դէպ 'ի պարիսպը գնաց, և աչքերը
վերցընելով տեսաւ որ՝ ահա մէկ
25 մարդ մը մինակ կը վազէր: Ան ա-
տենը դէտը բարձր ձայնով Թագա-
ւորին իմացուց. ու Թագաւորը ը-
սաւ. Թէ որ մինակ է, անոր բե-
րանը աւետիս կայ: Ու անիկայ
26 կու գար ու կը մօտենար: Եւ դէ-
տը մէկ ուրիշ վազող մարդ մը տե-
սաւ. ու դէտը դռնապանին բարձր
ձայնով ըսաւ. Ահա մէկ ուրիշ
մարդ մըն ալ մինակ կը վազէ: Եւ
Թագաւորը ըսաւ. Ան ալ աւե-
27 տաւոր է: Ու դէտը ըսաւ. Առ-
ջինին ընթացքը՝ Սադովկի որդւոյն
Աքիմաասին ընթացքին պէս կ'երե-
նայ ինծի: Եւ Թագաւորը ըսաւ.
Անիկայ բարի մարդ է, ու բարի ա-
28 ւետիսով կու գայ: Եւ Աքիմաաս
պոռալով՝ ըսաւ Թագաւորին. Ող-
ջո՛յն. ու երեսի վրայ գետինը ինկա-
լով՝ երկրպագութիւն ըրաւ Թա-
գաւորին, ու ըսաւ. Օրհնեա՛լ ըլլայ
քու Տէր Աստուածդ, որ իմ տի-
րոջս Թագաւորին դէմ ձեռք վեր-
ցընողները քու ձեռքդ մատնեց:
29 Եւ Թագաւորը ըսաւ. Աբիսողոմ
պատանին ո՞ղջ է: Ու Աքիմաաս
ըսաւ. Երբոր Յովաբ՝ Թագաւորին
ծառան ու զիս քու ծառադ խրկեց,
մէկ մեծ խումբ մը տեսայ, բայց
30 ինչ ըլլալը չիմացայ: Եւ Թագա-
ւորը ըսաւ. Դարձի՛ր ու հո՛ս կայ-
31 նէ: Ու անիկայ դարձաւ ու կայ-
նեցաւ: Եւ ահա Քուսին եկաւ.
ու Քուսի ըսաւ. Իմ տիրոջս Թա-
գաւորին աւետիս կու տամ, որ բո-
լոր քու վրադ ելլողներուն ձեռքէն
Տէրը այսօր քեզ ազատեց, ու քեզի
32 իրաւունք ըրաւ: Եւ Թագաւորը
Քուսիին ըսաւ. Աբիսողոմ պա-
տանին ո՞ղջ է: Ան ատենը Քու-
սին ըսաւ. Իմ տիրոջս Թագաւո-
րին թշնամիները՝ ու չարութիւն
ընելու համար քու վրադ ելլողները՝
33 ան պատանիին պէս ըլլան: Եւ
Թագաւորը խռովեցաւ. ու դրան
վերնատունը ելաւ, ու լացաւ. և
քալելով՝ այսպէս կ'ըսէր. ծ Որդեակ
իմ Աբիսողոմ, որդեակ իմ, որ-
դեակ իմ Աբիսողոմ, երանի՛ թէ
քու տեղդ ես մեռնէի. Աբիսողոմ
որդեակ իմ, որդեակ իմ:

## ԳԼ. ԺԹ

1 Յովաբ կ'արդիլէ Թագաւորը սուգ ընելէն: 9 Իսրայէլացիք կ'արտորան Թագաւորը ետ բերելու: 11 Դաւիթ՝ քահանաներուն լուր կը խրկէ որ Յուդայի մարդիկը յորդորեն: 18 Սեմէիին յանցանքը կը ներուի: 32 Բերզելին իր տունը կը դառնայ, ու անոր որդին Քամա-

ե Հմր 5:

* Կամ՝ ինծի համար

† Եբր. իմ կեանքիս դէմ ունայնութիւն ըրած պիտի ըլլայի.

ղ Յես. է. 26:

ե Ծն. ԺԴ. 17:

զ Տես Գլ. ԺԴ. 27:

‡ Եբր. ձեռքը

Ն. Ք. ԴՔ. 1023

ը Դ Թագ. Թ. 17:

ծ Գլ. ԺԹ. 4:

Ն. Ք. զՔ. 1023
ամը Թագաւորին պալատին մէջ կ'ընդունուի ։
41 Իսրայէլացիք կը վիճին Յուդայեանց հետ, որ առանց իրենց ներկայ գտնուելուն՝ Թագաւորը տուն բերեր են ։

1 Եւ Յովաբին պատմուեցաւ թէ՝
Ահա Թագաւորը Աբիսողոմին
համար կու լայ ու սուգ կ'ընէ ։
2 Եւ ան օրը յաղթութիւնը սուգի
դարձաւ բոլոր զօրքին առջեւ .
քանզի զօրքը լսեց որ Թագաւորը
3 իր որդւոյն համար կը ցաւի ։ Ու ան
ա Հմր 32 ։ օրը զօրքը գողի պէս ա քաղաքը կը
մտնէր, պատերազմէն փախած ու
4 ամչցած զօրքի պէս ։ Եւ Թագա-
բ Գլ. ժե. 30 ։ ւորը բ իր երեսը ծածկեց . ու Թա-
գաւորը մեծ ձայնով մը կը կանչէր .
գ Գլ. ժը. 33 ։ գ Որդեակ իմ Աբիսողոմ, Աբիսո-
ղոմ որդեակ իմ, որդեակ իմ ։
5 Եւ Յովաբ ներս մտաւ Թագա-
ւորին քովը, ու ըսաւ . Այսօր քու
կեանքդ, ու քու տղաքներուդ ու
աղջիկներուդ կեանքը, և քու կը-
նիկներուդ ու հարճերուդ կեանքը
ազատող ամէն ծառաներուդ երե-
6 սը՝ այսօր ամօթով ըրիր . Քանզի
քեզ ատողները կը սիրես, ու քեզ
սիրողները կ'ատես . վասն զի այսօր
յայտնեցիր որ դու իշխաններդ ու
ծառաներդ բանի մը տեղ չես դներ .
և այսօր աղէկ հասկըցայ որ, թէ
որ այսօր Աբիսողոմը ողջ մնար, ու
մենք ամէնքս մեռնէինք, ան ատե-
նը քու աչքերուդ հաճոյ պիտի
7 երևնար ։ Եւ հիմա ոտք ելիր, ու
դուրս եկուր, ու քու ծառաներուդ
* Եբր. սըր- տին . Ծն. լդ. 3 ։ *հետ քաղցրութեամբ" խօսէ .
քանզի Տէրոջմով երդում կ'ընեմ
որ՝ թէ որ դուն դուրս չելլես, աս
գիշեր քովդ մարդ մը պիտի չմնայ .
ու ասիկայ քեզի՝ քու տղայութե-
նէդ մինչև հիմա գլուխդ եկած ամէն
ձախորդութիւններէն աւելի գէշ
8 կ'ըլլայ ։ Եւ Թագաւորը ելաւ, ու
դուռը նստաւ . ան ատենը բոլոր
զօրքին պատմեցին ու ըսին . Ահա
Թագաւորը դուռը նստեր է . ու
բոլոր զօրքը Թագաւորին առջեւը
եկան . բայց Իսրայէլի մարդիկը ի-
րենց վրանները փախեր էին ։
9 Եւ Իսրայէլին ամէն ցեղերուն
մէջ բոլոր ժողովուրդը կը վիճէին
ու կ'ըսէին . Մեր թշնամիներուն
ձեռքէն մեզ փրկողը Թագաւորն
է, ու Փղշտացւոց ձեռքէն մեզ ա-
զատողը անիկայ է . և հիմա Աբի-
դ Գլ. ժե. 14 ։ սողոմին պատճառովը դ աս երկրէս
10 փախաւ . Ու Աբիսողոմը՝ որն որ
մեր վրայ ե թագաւոր օծեցինք, պա-
տերազմի մէջ մեռաւ . և հիմա
դուք Թագաւորը ետ դարձնելու
վրայով ինչու՞ բան մը չէք խօսիր ։
11 Ու Դաւիթ Թագաւորը՝ Սադովկ
ու Աբիաթար քահանաներուն զ ղրկ
խրկեց՝ ըսելով . Յուդայի ծերե-
րուն հետ խօսեցէք ու ըսէք . Թա-
գաւորը իր տունը դարձնելու ին-
չու՞ † ետ կը մնաք" . քանզի բոլոր † Եբր. վեր- ջիններըը կ'ըլլաք .
Իսրայէլին խօսքը Թագաւորին հա-
12 սաւ՝ մինչև անոր տունը . Դուք
իմ եղբայրներս, է ոսկորս ու մար- է Գլ. ե. 1 ։
մինս էք . ու Թագաւորը իր տունը
դարձնելու ինչու՞ ետ կը մնաք ։
13 ը Եւ Ամեսային ըսէք . Դուն իմ ը Գլ. ժէ. 25 ։
ոսկորս ու մարմինս չե՞ս . թ Աս- թ Հռութ. ա. 17 ։
տուած ինծի այսպէս՝ ու ասկէ
աւելի ընէ, թէ որ Յովաբին տեղը
միշտ իմ առջեւս զօրագլուխ չըլլաս ։
14 Եւ Յուդայի բոլոր մարդոցը սիր-
տը՝ ժ մէկ մարդու սրտի պէս իրեն ժ Դատ. ի. 1 ։
դարձուց . ու Թագաւորին պատ-
գամաւորներ խրկեցին՝ ըսելով .
Դարձիր, թէ դուն և թէ քու ա-
15 մէն ծառաներդ ։ Ան ատենը Թա-
գաւորը դարձաւ, ու մինչև Յորդա-
նան եկաւ . Յուդան ալ մինչև
ի Գաղգաղա եկաւ, որ Թագաւորը ի Յես. ե. 9 ։
դիմաւորէ, ու Թագաւորը Յոր-
դանանէն անցընէ ։
16 Ու լ Գերայի որդին Բաւուրիմա- լ Գլ. ժզ. 5 ։ գ Թագ. բ. 8 ։
ցի Բենիամինեան Սեմէին արտորա-
լով՝ Յուդայի մարդիկներուն հետ
Դաւիթ Թագաւորը դիմաւորելու
17 իջաւ . Եւ անոր հետ Բենիամինէն
հազար մարդ կար . ու Սաւուղին
տանը ծառան խ Սիբա՝ իր տասնու- խ Գլ. թ. 2, 10 ։ ժզ. 1. 2 ։
հինգ որդիներովը և քսան ծառա-
ներովը մէկտեղ . ու Թագաւորին առ-
18 ջեւը՝ ‡ Յորդանանը հասան" ։ Եւ ‡ Կամ՝ Յոր- դանանէն անցան ։
Թագաւորին տունը անցընելու հա-
մար, ու անոր աչքերուն հաճոյ
երևցածը ընելու համար՝ մէկ նա-
ւակ մը անցաւ . ու երբոր Թա-
գաւորը Յորդանանէն անցաւ, Գե-
րայի որդին Սեմէին՝ Թագաւորին
19 առջեւը ինկաւ, Եւ Թագաւորին
ըսաւ . ծ Իմ տէրս ինծի յանցանք ծ Ա Թագ. իբ. 15 ։
չսեպէ, ու իմ Թագաւոր տիրոջս
Երուսաղէմէն ելած օրը՝ կ ծառայիդ կ Գլ. ժզ. 5. 6. 7 ։
ըրած անօրէնութիւնը չյիշէ, ու
Թագաւորը հ զանիկայ իր սրտին հ Գլ. ժգ. 33 ։
20 մէջը չդնէ . Քանզի քու ծառադ
գիտցայ որ մեղք գործեցի . և
ահա այսօր ձ Յովսէփին բոլոր ձ Տես գլ. ժզ. 5 ։
տունէն առաջ ես եկայ, որ իմ
Թագաւոր տէրս դիմաւորելու իջ-
21 նեմ ։ Ու Շարուհեայի որդին Ա-
բեսսա պատասխան տուաւ ու ը-
սաւ . Միթէ Սեմէի ասոր համար
պիտի չմեռնի՞, որ ղ Տէրոջը օծեա- ղ Ել. իբ. 28 ։
22 լը անիծեց ։ Բայց Դաւիթ ըսաւ . ճ Գլ. ժզ. 10 ։
ճ Դուք ինծի հետ ի՞նչ բան ունիք՝
ով Շարուհեայի որդիք, որ այսօր
ինծի թշնամութիւն կ'ընէք . մ Մի- մ Ա Թագ. ժա. 13 ։
թէ այսօր Իսրայէլէն մարդ մը պի-
տի մեռնի՞ . որովհետև գիտեմ որ
ես այսօր Իսրայէլի վրայ Թագա-

Ն. Ք. Գ. Ք.
1023

23 ւոր եմ ։ Եւ ճԹագաւորը Սեմէյին
ըսաւ . Պիտի չմեռնիս . ու Թագա-
ւորը անոր երդում ըրաւ ։

ճ Գ Թագ. Բ. 8. 9. 37. 46.

24 Եւ մՍաւուղին որդին Մեմփի-
բոսթէն՝ Թագաւորը դիմաւորելու
իջաւ . ու անիկայ՝ Թագաւորին
գացած օրէն մինչեւ անոր խաղա-
ղութեամբ եկած օրը , ոտքերը չէր
դարմաներ , ու մօրուքը չէր շիտ-
25 կեր , եւ լաթերը չէր լուացեր ։ Ու
երբոր Թագաւորը դիմաւորելու
համար Երուսաղէմ եկաւ , Թագա-
ւորը անոր ըսաւ . Ո՛վ Մեմփիբոս-
թէ , յինչո՞ւ ինծի հետ չգացիր ։

մ Գլ. Թ. 6.

յ Գլ. ԺԶ. 17.

26 Եւ անիկայ ըսաւ . Ո՛վ տէր իմ
Թագաւոր . իմ ծառաս զիս խա-
բեց . քանզի քու ծառադ ըսաւ .
Էշը պատրաստեմ , որ վրան հեծ-
նեմ , ու Թագաւորին հետը եր-
թամ . վասն զի ծառադ կաղ է ։
27 Եւ նանիկայ՝ քու ծառադ՝ իմ
Թագաւոր տիրոջս առջեւը բամբա-
սեց . շբայց իմ Թագաւոր տէրս
Աստուծոյ հրեշտակի մը պէս է .
ուստի քու աչքերուդ հաճոյ երե-
28 ցածը ըրէ ։ Քանզի թէպէտեւ իմ
հօրս բոլոր տունը իմ Թագաւոր
տիրոջս առջեւը ոմիայն մեռնելու
մարդիկներ էին , չբայց դուն՝ քու
ծառադ՝ քու սեղանդ կերակուր
ուտողներուն կարգը դրիր . ուստի
ալ ասկէ ետեւ ի՞նչ իրաւունք ու-
29 նիմ Թագաւորին բողոքելու ։ Եւ
Թագաւորը անոր ըսաւ . Ալ ին-
չո՞ւ քու բաներուդ վրայ կը խօսիս .
ես ըսի որ՝ դուն ու Սիբան արտերը
30 մէջերնիդ բաժնէք ։ Ու Մեմփի-
բոսթէ ըսաւ Թագաւորին . Թող
անիկայ ամէնն ալ առնէ . որովհետեւ իմ Թագաւոր տէրս խաղա-
ղութեամբ իր տունը եկաւ ։

ն Գլ. ԺԶ. 3.

շ Գլ. ԺԴ. 17. 20.

ո Ա Թագ. ԻԶ. 16.
չ Գլ. Թ. 7. 10. 13.

31 Եւ պԳաղաադացի Բերզելին
Ռովգելիմէն իջաւ , ու Թագաւորին
հետ Յորդանանէն անցաւ , որ զա-
32 նիկայ Յորդանանէն յուղարկէ ։ Ու
Բերզելի խիստ ծեր էր , ութսուն
տարեկան մարդ ըլլալով . եւ որչափ
ժամանակ որ Թագաւորը Մանայի-
մի մէջ կեցաւ , ջզանիկայ ինքը
կերակրեց . քանզի խիստ մեծ մարդ
33 մըն էր ։ Ու Թագաւորը Բերզելիին
ըսաւ . Ինծի հետ անցիր . եւ քեզ
իմ քովս Երուսաղէմի մէջ կերակ-
34 րեմ ։ Ու Բերզելի՝ Թագաւորին
ըսաւ . Իմ կենացս տարիներուն օ-
րերը ո՞րչափ պիտի ըլլան՝ որ Թա-
գաւորին հետ Երուսաղէմ ելլեմ .
35 Ես այսօր ռութսուն տարեկան եմ .
միթէ աղէկը ու գէշը կրնա՞մ որո-
շել . միթէ ծառադ իր կերածին
ու խմածին համը կրնա՞յ առնել .
եւ ասկէ ետքը խաղ կանչող մար-
դիկներուն կամ կնիկներուն ձայնը

պ Գ Թագ. Բ. 7.

ջ Գլ. ԺԷ. 27.

ռ Սաղ. Ղ. 10.

Ն. Ք. Գ. Ք.
1023

կրնա՞մ լսել . ու քու ծառադ իմ
Թագաւոր տիրոջս ինչո՞ւ համար
36 բեռ ըլլայ ։ Քու ծառադ՝ Թագա-
ւորին հետ քիչ մը Յորդանանէն
պիտի անցնի . ու Թագաւորը ին-
չո՞ւ ինծի այսպէս փոխարէն մը հա-
37 տուցանէ ։ Թո՛ղ ծառադ դառ-
նամ , ու իմ քաղաքիս մէջ իմ հօրս
ու մօրս գերեզմանին քովը մեռ-
նիմ . ահա՛ քու ծառադ սՔամաա-
մը իմ տիրոջս Թագաւորին հետ
անցնի . ու քու աչքերուդ հաճոյ
38 երեւցածը ըրէ անոր ։ Եւ Թագա-
ւորը ըսաւ . Թող Քամաամը ինծի
հետ անցնի , ու ես քու աչքերուդ
հաճոյ երեւցածը պիտի ընեմ անոր .
եւ ինծմէ ինչ որ խնդրես , քեզի
39 պիտի ընեմ ։ Ու բոլոր ժողովուր-
դը Յորդանանէն անցաւ . Թագա-
ւորն ալ անցաւ ։ Եւ Թագաւորը
Բերզելին վհամբուրեց , ու զանի-
կայ օրհնեց . ան ալ իր տեղը դար-
40 ձաւ ։ Եւ Թագաւորը Գաղգաղա
անցաւ . ու Քամաամը անոր հետ
անցաւ . այսպէս Յուդային բոլոր
ժողովուրդը ու Իսրայէլին ալ կէս
ժողովուրդը Թագաւորը անցու-
ցին ։

ս Գ Թագ. Բ. 7. Երեմ. ԽԱ. 17.

վ Ծն. ԼԱ. 55.

41 Եւ ահա՛ բոլոր Իսրայէլի մարդիկ-
ները Թագաւորին եկան , ու Թա-
գաւորին ըսին . Ինչո՞ւ համար մեր
եղբայրները՝ Յուդայի մարդիկը քեզ
գողցան , ու տԹագաւորը՝ եւ անոր
տունը՝ ու անոր հետ Դաւիթին
բոլոր մարդիկները Յորդանանէն
42 անցուցին ։ Եւ Յուդայի բոլոր
մարդիկը՝ Իսրայէլի մարդոցը պա-
տասխան տուին ու ըսին . Քանզի
Թագաւորը րմեզի մօտ ազգական է .
ու աս բանիս համար ինչո՞ւ այսպէս
կը նեղանաք . միթէ Թագաւորէն
բան մը կերա՞նք , կամ թէ անիկայ
43 մեզի պարգեւ մը տուա՞ւ ։ Եւ Իսրա-
յէլի մարդիկը Յուդայի մարդոցը
պատասխան տուին ու ըսին . Մենք
Թագաւորին քովը տասը բաժին
ունինք , ու նաեւ Դաւիթին վրայ
մենք ձեզմէ աւելի իրաւունք ու-
նինք . եւ ինչո՞ւ համար մեզ անար-
գեցիք , ու մեր Թագաւորը ետ
դարձնելու համար՝ առաջ *մեզմէ
խորհուրդ չհարցուցիք" . բայց
ցՅուդայի մարդիկներուն խօսքը՝
Իսրայէլի մարդիկներուն խօսքէն
աւելի խիստ էր ։

տ Հմր 15.

ր Հմր 12.

* Եբր. մեր խօսքը չե-ղաւ.
ց Տես Դատ. Ի. 1. ԺԲ. 1.

ԳԼ. Ի

1 Իսրայէլի ու Յուդայի մէջ եղած վէճին պատճառով՝ Սաբէէ երկպառակութիւն մը կը հանէ Իսրայէլի մէջ . 3 Դաւիթ իր տասը հարճերը մինչեւ իրենց մահուան օրը՝ զատ տան մը մէջ պահել կու տայ ։ 4 Ամասայի Յուդային վրայ զօրապետ կ'ըլլայ . իսկ Յովաբ զանիկայ կը մեռցնէ ։ 14 Յովաբ՝ Սաբէէին ետեւէն կ'իյնայ մինչեւ Աբէլ . 16 Իմաստուն

Ն. Ք. Ա.
ԹՈՒ 1022

կնիկ մը Սաբէէին գլուխը քաղաքը կ'ազատէ ։
23 Դաւիթին պաշտօնատարները ։

1 Եւ հոն Բենիամինի ցեղէն Բոքո-
րեան Սաբէէ անունով անօրէն
մարդ մը գտնուեցաւ. և անիկայ
փող հնչեցուց՝ ու ըսաւ. ա Մենք
Դաւիթին քովը բաժին՝ ու Յես-
սէի որդւոյն քովը ժառանգութիւն
չունինք. ո՛վ Իսրայէլ՝ բ ամէն մարդ
2 իր վրանը դառնայ ։ Ուստի Իսրայէ-
լի բոլոր մարդիկները Դաւիթէն
զատուեցան, ու Բոքորեան Սա-
բէէին ետևէն գացին. բայց Յու-
դայի մարդիկները՝ Յորդանանէն
մինչև Երուսաղէմ՝ իրենց Թագա-
ւորին յարեցան ։
3 Եւ Դաւիթ Երուսաղէմ իր տու-
նը եկաւ. ու Թագաւորը իր տանը
պահպանութեանը համար թողու-
ցած տասը գ հարճերը առաւ, ու
զանոնք մէկ տան մը մէջ պահել
տուաւ, և զանոնք կը կերակրէր.
բայց անոնց չմօտեցաւ. և անոնք
մինչև իրենց մեռնելու օրը՝ պա-
հուած մնացին, ու որբևայրիի պէս
ապրեցան ։
4 Եւ Թագաւորը Ամեսային ըսաւ.
դ Մինչև իրեք օր Յուդայի մարդիկ-
ները ինծի կանչէ, ու դուն ալ հոս
5 ներկայ եղիր ։ Ուստի Ամեսայի՝
Յուդան կանչելու գնաց. ու Դա-
ւիթին դրած ատենէն աւելի ուշա-
6 ցաւ ։ Ան ատենը Դաւիթ՝ Աբեսա-
սային ըսաւ. Հիմա Բոքորեան Սա-
բէէն՝ Աբիսողոմէն աւելի չարու-
թիւն պիտի ընէ մեզի. ուրեմն դուն
ե քու տիրոջդ ծառաները հետդ
առ, ու անոր ետևէն ինկիր. չըլլայ
որ իրեն պարսպաւոր քաղաքներ
գտնէ, ու մեր աչքէն անյայտ ըլլայ ։
7 Այսպէս Յովաբին մարդիկները ու
զ Քերեթիները ու Փելեթիները և
բոլոր զօրաւորները անոր ետևէն ե-
լան, ու Բոքորեան Սաբէէն հալա-
ծելու համար Երուսաղէմէն ելան ։
8 Երբոր անոնք Գաբաւոնի մէջ ե-
ղող մեծ քարին քովն էին, Ամե-
սայի անոնց դիմացը ելաւ. և Յո-
վաբ իր հագած հանդերձը գօտեւո-
րած էր, ու անոր վրայէն ուրիշ
գօտիով՝ մէջքը սուր մը կապած էր
պատեանովը մէկտեղ. ու երբոր
անիկայ կ'երթար, սուրը պատեանէն
9 ինկաւ ։ Եւ Յովաբ՝ Ամեսային
ըսաւ. Ե՛ղբայրս՝ ողջ առո՞ղջ ես.
է ու Յովաբ Ամեսային համբուրելու
համար՝ աջ ձեռքովը անոր մօրու-
10 քէն բռնեց ։ Եւ Ամեսայի՝ Յովա-
բին ձեռքը եղած սուրէն չզգուշա-
ցաւ. ը ու անով Յովաբ թ սնակուշ-
տէն զարկաւ զանիկայ, և անոր ա-
ղիքները գետինը թափեց. ու անոր
երկու անգամ չզարկաւ. ու անի-
կայ մեռաւ ։ Եւ Յովաբ ու անոր
եղբայրը Աբեսսա՝ Բոքորեան Սա-
11 բէէին ետևէն ինկան ։ Ան ատենը
Յովաբին մանչերուն մէկը անոր քո-
վը կայնեցաւ՝ ու ըսաւ. Ով որ
Յովաբը կը սիրէ՝ ու ով որ Դա-
ւիթին կողմն է, Յովաբին ետևէն
12 երթայ ։ Եւ Ամեսայի ճամբուն վրայ
իր արեանը մէջ կը թաւալէր ։ Ու
ան մարդը երբոր տեսաւ որ բոլոր
զօրքը կայնեցաւ մնաց, Ամեսային
ճամբու վրայէ վերցուց, ու արտի
մը մէջ ձգեց, և անոր վրայ լաթ մը
ծածկեց. քանզի տեսաւ որ ամէն
անոր քովը եկողը կանգ կ'առնէ ։
13 Ու զանիկայ ճամբուն վրայէն վեր-
ցուցածին պէս՝ ամէն մարդ Յովա-
բին ետևէն գնաց՝ Բոքորեան Սա-
14 բէէն հալածելու համար ։ (Բայց
անիկայ Իսրայէլի բոլոր ցեղերէն
մինչև ժ Աբէլը ու Բեթմաաքան ան-
ցեր էր բոլոր Բերացիներուն հետ,
որոնք անոր քովը ժողվուելով՝ անոր
15 ետևէն գացեր էին ։) Եւ անոնք
եկան, ու Բեթմաաքային Աբէլը՝
զանիկայ պաշարեցին. ու քաղաքին
առջևը ի հողաբլուր մը շինեցին, որ
պարսպին մօտ կանգնուեցաւ. և
Յովաբին հետը եղող բոլոր զօրքը
պարիսպը փլցնելու *կ'աշխատէին ։
16 Ու մէկ իմաստուն կնիկ մը քա-
ղաքէն կանչեց. Լսեցէք, լսեցէք.
շնորհք ըրէք, Յովաբին ըսէք.
Հոս մօտեցիր որ քեզի հետ խօսիմ ։
17 Եւ Յովաբ անոր մօտեցաւ. ու կնի-
կը ըսաւ. Յովաբը դո՞ւն ես ։ Եւ
անիկայ ըսաւ. Ես եմ ։ Ու կնիկը
անոր ըսաւ. Քու աղախինիդ խօս-
քերը մտիկ ըրէ. ու անիկայ ըսաւ.
18 Ահա մտիկ կ'ընեմ ։ Եւ կնիկը խօ-
սեցաւ ու ըսաւ. Հին ատենը սո-
վորաբար կ'ըսէին. Թող Աբէլին
†երթան խորհուրդ հարցընեն". ու
19 անանկ լմնցընեն ։ Ես Իսրայէլի
մէջ խաղաղարար ու հաւատարիմ
մարդ մըն եմ. ու դուն կը ջանաս
աւրել ‡ քաղաք մը՝ որ Իսրա-
յէլի մէջ մայրաքաղաք մըն է".
լ Տէրոջը ժառանգութիւնը ինչո՞ւ
20 բնաջինջ կ'ընես ։ Եւ Յովաբ պա-
տասխան տուաւ, ու ըսաւ. Քաւ
լիցի, քաւ լիցի. որ ես բնաջինջ
21 ընեմ կամ աւրեմ. Բանը այդպէս
չէ. հապա Եփրեմի լեռնէն Բոքո-
րեան Սաբէէ անունով մարդ մը իր
ձեռքը Դաւիթ Թագաւորին դէմ
վերցուց. միայն անիկայ տուէք,
ու ես քաղաքէս երթամ ։ Եւ կնի-
կը Յովաբին ըսաւ. Ահա անոր գը-
լուխը պարսպին վրայէն քեզի պի-
22 տի նետուի ։ Ու կնիկը բոլոր ժո-
ղովուրդին գնաց խ իր իմաստու-
թեամբը խօսեցաւ. և Բոքորեան

ա Գլ. ժթ. 43 ։
բ Գ Թագ. ժբ. 16. Բ Մն. ժ. 16 ։
գ Գլ. ժզ. 16. ժզ. 21, 22 ։
դ Գլ. ժթ. 13 ։
ե Գլ. ժա. 11. Գ Թագ. ա. 33 ։
զ Գլ. ը. 18. Գ Թագ. ա. 38 ։
է Մատ. իզ. 49. Ղուկ. իբ. 47 ։
ը Գ Թագ. բ. 5 ։
թ Գլ. բ. 23 ։

Ն. Ք. Ա.
ԹՈՒ 1022

ժ Դ Թագ. ժե. 29. Բ Մն. ժզ. 4 ։
ի Դ Թագ. ժթ. 32 ։
* Եբր. կ'աւերէին ։
† Եբր. Հարցնելով հարցընեն ։
‡ Եբր. քաղաք և մայր Իսրայէլի մէջ
լ Թագ. իզ. 19. Գլ. իա. 3 ։
խ Ժող. թ. 14, 15 ։

Ն․ Ք․ գՔ․ իբր 1022

Սաբէէին գլուխը կտրեցին, ու Յո-
վաբին նետեցին ։ Ան ատենը ա-
նիկայ փող հնչեցուց․ ու ամէն
մարդ ան քաղաքէն իր վրանը քա-
շուեցաւ․ Յովաբն ալ Երուսաղէմ՝
թագաւորին դարձաւ ։
23 Եւ ᶠ Յովաբ Իսրայէլի բոլոր զօր-
քերուն վրայ էր․ ու Յովիադայի
որդին Բանեան Քերեթիներուն ու
24 Փելեթիներուն վրայ էր․ Եւ Ադո-
րամ ᵍ հարկերուն վրայ․ ու ʰ Աքի-
ղուդի որդին Յովսափատը յիշա-
25 տակաց դպիր էր․ Եւ Սուսա ա-
տենադպիր էր․ ու ⁱ Սադովկ ու Ա-
26 բիաթար քահանաներ էին ։ Եւ
Յայիրացի Իրասն ալ Դաւիթին
ᵏ նախարարն էր ։

ᶠ Գլ․ Ը․ 16․ 18․ | ᵍ Գ Թագ․ Դ․ 6․ | ʰ Գլ․ Ը․ 16․ Գ Թագ․ Դ․ 3․ | ⁱ Գլ․ Ը․ 17․ Գ Թագ․ Դ․ 4․ | Գլ․ ԻԳ․ 38․ | ᵏ Գլ․ Ը․ 18․

## ԳԼ․ ԻԱ

1 Գաբաւոնացւոց պատճառաւը եղած երեք տա-
րուան սովը Սաւուղին եօթը որդիներուն կա-
խուելովը կը դադրի ։ 10 Ռեսփային գութը
որ մեռցուածներուն ցուցուց ։ 12 Դաւիթ՝
Սաւուղին ու Յովնաթանին ոսկորները Կիսին
գերեզմանին մէջ թաղել կու տայ ։ 15 Փղշտա-
ցւոց դէմ եղած չորս պատերազմներուն
մէջ՝ Դաւիթին չորս մարդիկը չորս հսկաներ
կը մեռցընեն ։

իբր 1021

1 Ու Դաւիթին օրերը՝ իրարու ե-
տեւէ երեք տարի սով եղաւ․ ու
Դաւիթ Տէրոջը * հարցուց ։ Եւ
Տէրը ըսաւ․ Ասիկայ Սաւուղին ու
անոր արիւնահեղ տանը համար է,
քանզի անիկայ Գաբաւոնացիները
2 մեռցուց ։ Ու թագաւորը Գա-
բաւոնացիները կանչեց, ու անոնց
խօսեցաւ․ ( Եւ Գաբաւոնացիք Իս-
րայէլի որդւոցմէ չէին, այլ ˡ Ամոր-
հացւոց մնացորդէն էին․ ու Իսրա-
յէլի որդիքը անոնց երդում ըրեր
էին․ բայց Սաւուղ՝ Իսրայէլի ու
Յուդայի որդւոցը համար նախան-
ձաւորութիւն ընելով, զանոնք
3 զարնել ուզեր էր ։ ) Եւ Դաւիթ
Գաբաւոնացիներուն ըսաւ․ Ձեզի
ի՞նչ ընեմ, ու ինչո՞վ քաւութիւն
ընեմ, որ ᵐ Տէրոջը ժառանգու-
4 թիւնը օրհնէք ։ Եւ Գաբաւոնացիք
անոր ըսին․ Սաւուղէն ու անոր
տունէն արծաթ կամ ոսկի չենք
ուզեր, ու Իսրայէլէն մարդ մը մեռ-
ցընել չենք ուզեր ։ Եւ անիկայ ը-
սաւ․ Դուք ինչ որ ըսէք, ձեզի
5 պիտի ընեմ ։ Ու անոնք թագաւո-
րին ըսին․ Ան մարդը որ մեզ ջար-
դեց, ու մեզ անանկ կորսնցընել
ուզեց, որ ամենեւին Իսրայէլի սահ-
6 մաններուն մէջը չգտնուինք, Անոր
որդիներէն մեզի եօթը մարդ տրուի,
ու զանոնք ⁿ Տէրոջը ընտրեալ ᵒ Սա-
ւուղին Գաբաայի մէջ Տէրոջը հա-
մար կախենք ։ Եւ թագաւորը՝ Կու
տամ ըսաւ ։
7 Բայց թագաւորը՝ Սաւուղեան

* Եբր․ երեսը փնտռեց ։ | ˡ Յես․ Թ․ 3․ 15․ 16․ 17․ | ᵐ Գլ․ Ի․ 19․ | ⁿ Ա Թագ․ Ժ․ 24․ | ᵒ Ա Թագ․ Ժ․ 26․ ԺԱ․ 4․

Ն․ Ք․ գՔ․ իբր 1021

Յովնաթանին որդւոյն Մեմփիբոս-
թէին խնայեց, Սաւուղին որդւոյն
Յովնաթանին ու Դաւիթին մէջ-
տեղը եղած ᵖ Տէրոջը երդումին հա-
8 մար ։ Բայց թագաւորը՝ ᵍ Այիա-
յին աղջկանը Ռեսփային երկու որ-
դիները, որոնք Սաւուղին ծներ էր,
այսինքն Արմոնին ու Մեմփիբոս-
թէն, եւ Սաւուղին աղջկանը † Մեղ-
քողին հինգ որդիները՝ որոնք ʳ Մա-
ուլացի Բերզելիին որդւոյն Եդրիե-
9 լին ծներ էր, առաւ, Ու զանոնք
Գաբաւոնացւոց ձեռքը տուաւ․
ու զանոնք ˢ Տէրոջը առջեւ լեռա-
նը վրայ կախեցին, ու եօթն ալ
մէկտեղ մեռան․ եւ անոնք հնձոց
առջի օրերը՝ գարիի հնձոց սկիզբը
մեռցուեցան ։
10 Ու ᵗ Այիային աղջիկը Ռեսփա
մէկ քուրձ մը առաւ, ու զանիկայ
իրեն համար ապառաժի մը վրայ
փռեց, ᵘ հնձոց սկիզբէն՝ մինչեւ ա-
նոնց վրայ երկինքէն անձրեւ գալը
ու ցորեկը երկինքին թռչունները՝
ու գիշերը անասնոց գազանները
11 չէր թողուր որ անոնց դպչին ։ Եւ
Սաւուղին հարճին՝ Այիային աղ-
ջկանը Ռեսփային ըրածը Դաւի-
12 թին պատմեցին ։ Ու Դաւիթ գը-
նաց, եւ Սաւուղին ու անոր որդւոյն
Յովնաթանին ոսկորները առաւ
ᵛ Գաղաադու Յաբիսի բնակիչնե-
րէն, որոնք Բեթսանի հրապարա-
կէն զանոնք գողցեր էին․ վասն զի
ʷ Փղշտացիք զանոնք հոն կախեր
էին ան օրը՝ որ Փղշտացիք Գեղ-
բուէի վրայ Սաւուղը մեռցուցեր
13 էին․ Եւ Սաւուղին ոսկորները ու
անոր որդւոյն Յովնաթանին ոսկոր-
ները անկէ վերցուց․ ու կախուած-
ներուն ոսկորներն ալ ժողվեցին ։
14 Եւ Սաւուղին ու անոր որդւոյն
Յովնաթանին ոսկորները՝ Բենիա-
մինի երկիրը՝ ˣ Սելայի մէջ անոր
հօրը Կիսին գերեզմանը թաղեցին․
ու թագաւորին բոլոր պատուիրա-
ծը ըրին․ ու անկէ ետքը ʸ Աս-
տուած երկրին համար եղած ա-
ղօթքը ընդունեց ։
15 Եւ Փղշտացիք նորէն Իսրայէլի
հետ պատերազմ ըրին․ եւ Դաւիթ
ու իր ծառաները իր հետը իջան,
ու Փղշտացւոց հետ պատերազմ ը-
րին․ ու Դաւիթ ուժէ կտրեցաւ ։
16 Եւ Յեսբիբենովը՝ որ Ռափայի որ-
դիներէն էր, ու երեք հարիւր սիկղ
ծանրութեամբ պղնձէ նիզակ մը
ունէր, ու մէջքը նոր սուր մը կա-
պեր էր, ուզեց որ Դաւիթը զար-
17 նէ ։ Բայց Շարուհեայի որդին Ա-
բեսսան անոր օգնութեան հասաւ,
ու Փղշտացին զարկաւ, ու զանի-
կայ մեռցուց ։ Ան ատենը Դաւի-

ᵖ Ա Թագ․ ԺԸ․ 3․ Ի․ 8․ 15․ 42․ ԻԳ․ 18․ | ᵍ Գլ․ Գ․ 7․ | † Կամ Մերոբինին․ տես Ա Թագ․ ԺԸ․ 19․ | ʳ Ա Թագ․ ԺԸ․ 19․ | 1019 | ˢ Գլ․ Զ․ 17․ | ᵗ Հմր Տ․ Գլ․ Դ․ 7․ | ᵘ Տես Բ Օր․ ԻԱ․ 23․ | ᵛ Ա Թագ․ ԼԱ․ 11 12 13․ | ʷ Ա Թագ․ ԼԱ․ 10․ | ˣ Յես․ ԺԸ․ 28․ | ʸ Յես․ Է․ 26․ Գլ․ ԻԴ․ 25․ | իբր 1018

Ն. Ք. գԹ. Լերր 1018

Գղ. ժը. 3. գ Թագ. ժա. 36. ժե. 4. Սաղ. ճլբ. 17.
Յա. Մն. ի. 4.
ղ ա Մն. ժա. 29.

թին մարդիկները անոր երդում
ըրին ու ըսին. Ասկէ ետքը դուն
մեզի հետ պատերազմի չելլես, որ
Իսրայէլին ճրագը չմարես։
18 Եւ ասկէ ետքը նորէն Փղշտա-
ցւոց հետ պատերազմ եղաւ Գով-
բի մէջ. ան ատենը Ուսացի Սով-
բաքը Ռափայի որդւոցմէ եղող
Սեփիան մեռցուց։
19 Եւ նորէն Փղշտացւոց հետ պա-
տերազմ եղաւ Գովբի մէջ ու
Բեթլեհեմացի Արիովրգիմին որդին
Եղէանանը Գեթացի Գողիաթին
եղբայրը զարկաւ, որ անոր նիզա-
կին բունը ոստայնանկաց գլանին
պէս էր։

Տես ա Մն. ի. 5.
Ժ ա Մն. ի. 6.

20 Եւ նորէն Գեթի մէջ պատե-
րազմ եղաւ. ու մէկ երկայնահա-
սակ մարդ մը կար, որ անոր
ձեռքերուն մատերը ու ոտքերուն
մատերը վեց վեց հատ ըլլալով՝ քը-
սանըչորս մատ ունէր. անիկայ ալ
21 Ռափայի որդւոցմէ էր։ Եւ անիկայ
Իսրայէլը նախատեց. բայց Դա-
ւիթին եղբօրը Սամայի որդին
Յովնաթանը զանիկայ զարկաւ։
22 Ասոնք չորսը Գեթի մէջ Ռափայէն
ծներ էին. և Դաւիթին ձեռքովը
ու անոր ծառաներուն ձեռքովը
ինկան։

Յ ա Թագ. ժէ. 10. 25. 26.
Ն ա Թագ. ժզ. 9.
ղ ա Մն. ի. 8.

## ԳԼ. ԻԲ

1—51 Աստուծոյ մեծ փրկութեանը և պէսպէս բարութիւններուն համար՝ շնորհակալութեան երգ մը։

1 Եւ Դաւիթ՝ ան օրը որ Տէրը զա-
նիկայ իր բոլոր թշնամիներուն
ձեռքէն ու Սաւուղին ձեռքէն ա-
զատեց, աս երգին խօսքերը Տէ-
2 րոջը խօսեցաւ, Ու ըսաւ.
Տէրը իմ վէմս, ամրութիւնս,
ու փրկիչս է.
3 Իմ Աստուածս իմ պարիսպս
է. Անոր կը յուսամ. անի-
կայ իմ վահանս, ու իմ փրկու-
թեանս եղջիւրը, իմ աշտարակս,
իմ ապաւէնս, ու ազատիչս է։
Զիս անիրաւութենէ դուն կ'ազա-
տես։
4 Օրհնեալ Տէրը կը կանչեմ, ու
իմ թշնամիներէս կ'ազատիմ։
5 Քանզի մահուան ալիքները իմ
բոլորտիքս առին, ու անօրէնու-
թեան հեղեղները զիս վախցուցին.
6 Գերեզմանին լարերը իս պաշա-
րեցին, ու մահուան որոգայթները
իմ առջևս առին։
7 Իմ նեղութեանս մէջ Տէրոջը
կանչեցի, ու իմ Աստուծոյս աղա-
ղակեցի. որ իր տաճարէն իմ
ձայնս լսեց, ու իմ աղաղակս անոր
ականջներուն հասաւ։
8 Ան ատենը երկիրը սասանեցաւ

Սաղ. ժը. ին վերնագիրը։ Սաղ. լդ. 19.
1018
Եղ. ժե. 1. Դատ. ե. 1.
բ Օր. լբ. 4. Սաղ. ժը. 2. լա. 3. հա. 3. ղա. 2. ճխդ. 2.
Եբր. ժայռս։
Եբր. բ. 13.
Ծն. ժե. 1.
Ղու. ա. 69.
Առակ. ժը. 10.
Սաղ. թ. 9. ժդ. 6. ծթ. 16. հա. 7. Երեմ. ժզ. 19.
Սաղ. ճժզ. 3.
Սաղ. ճժզ. 4. ճի. 1. Յովն. բ. 2.
Եղ. դ. 7. Սաղ. լդ. 6. 15. 17.
Դատ. ե. 4. Սաղ. հէ. 18. ղէ. 4.

ու դողաց. Երկինքին հիմերը
շարժեցան ու սասանեցան. քանզի
անիկայ բարկացաւ։
9 Անոր քիթէն ծուխ ելաւ. ու
բերնէն մաշող կրակ. անկէ կայ-
ծակներ բռնկեցան։
10 Եւ անիկայ երկինքը խոնարհե-
ցուց, ու իջաւ. և անոր ոտքերուն
տակը մառախուղ կար։
11 Ու քերովբէի մը վրայ ելաւ, ու
թռաւ. և հովին թևերուն վրայ
երևցաւ։
12 Ու խաւարը, ու թանձր ջու-
րերը, ու երկինքին ամպերը՝ իր
բոլորտիքը վարագոյր քաշեց։
13 Անոր առջևը եղող ճառագայթէն
կրակի կայծակներ բռնկեցան։
14 Տէրը երկինքէն որոտաց, ու
Բարձրեալը իր ձայնը լսել տուաւ։
15 Եւ նետեր խրկեց, ու զանոնք
ցրուեց. կայծակներ խրկեց, ու զա-
նոնք խռովեցուց։
16 Եւ Տէրոջը յանդիմանութիւ-
նովը ու անոր բարկութեան հո-
վին փչելովը, ծովին յատակները
երևցան, ու աշխարհիս հիմերը
յայտնուեցան։
17 Բարձրէն խրկեց, ու զիս բռնեց,
Եւ շատ ջուրերէն զիս հանեց։
18 Իմ զօրեղ թշնամիէս ու զիս
ատողներէն ազատեց զիս. վասն
զի ինծմէ զօրաւոր էին։
19 Իմ նեղութեանս օրը՝ իմ առ-
ջևս առին. բայց Տէրը ինծի հաս-
տատութեան գաւազան եղաւ.
20 Եւ զիս լայնարձակ տեղ մը
հանեց, ու զիս ազատեց. ինչու որ
ինծի հաւնեցաւ։
21 Տէրը իմ արդարութեանս պէս
ինծի փոխարէն կու տայ. իմ
ձեռացս մաքրութեանը համեմատ՝
հատուցում կ'ընէ ինծի.
22 Վասն զի Տէրոջը ճամբաները
պահեցի. ու իմ Աստուծոյս դէմ
ամբարշտութիւն չըրի։
23 Քանզի անոր ամէն դատաս-
տանները իմ առջևս էին. ու անոր
օրէնքներէն չհեռացայ։
24 Եւ անոր առջևը կատարեալ ե-
ղայ. ու իմ անօրէնութենէս զգու-
շացայ։
25 Ու Տէրը ինծի հատուցում ը-
րաւ, իմ արդարութեանս համե-
մատ, իմ ձեռացս մաքրութեանը
համեմատ, որ անոր աչքերուն առ-
ջևն է։
26 Ողորմածին հետ ողորմած կ'ըլ-
լաս, կատարեալ մարդուն հետ
կատարեալ կ'ըլլաս.
27 Մաքուրին հետ մաքուր կ'ըլլաս,
ու ծուռին հետ՝ կը ծռիս։
28 Եւ վշտացած ժողովուրդը դուն
կ'ազատես. ու քու աչքերդ համ-

Ն. Ք. գԹ. 1018

Յոբ. իզ. 11.
Սաղ. ղէ. 3. Ամբ. գ. 5. Եբր. ժբ. 29.
Սաղ. ճխդ. 5. Եւ. կդ. 1.
Եղ. ի. 21. դ Թագ. բ. 12. Սաղ. ղէ. 2.
Սաղ. ճդ. 3.
Հմր. 10. Սաղ. ղէ. 2.
Հմր. 9.
Դատ. ե. 20. ա Թագ. բ. 10. է. 10. Սաղ. իթ. 3. Եսա. լ. 30.
բ Օր. լբ. 23. Սաղ. է. 13. հէ. 17. ճխդ. 6. Ամբ. գ. 11.
Եղ. ժե. 8. Սաղ. ճզ. 9. Նաւ. ա. 4. Մատ. ը. 26.
Սաղ. ծդ. 1.
Սաղ. ճխդ. 7.
Հմր. 1.
Սաղ. լա. 8. ճժը. 5.
Ղուկ. ժե. 26. Սաղ. իբ. 8.
Հմր. 25.
ա Թագ. իդ. 23. դ Թագ. ը. 32. Սաղ. է. 8.
Սաղ. իդ. 4.
Ծն. ժը. 19. Սաղ. ճժթ. 3. Եփ. 1. Առակ. ը. 32.
բ Օր. է. 12. Սաղ. ճժթ. 30. 102.
Ծն. զ. 9. ժէ. 1. Յոբ. ա. 1.
Հմր. 21.
Մատ. ե. 7.
Ղև. իզ. 23. 24. 27. 28.
Սաղ. ժը. 26.
Եղ. դ. 7. 8. Սաղ. հր. 12. 13.
Յոբ. խ. 11. 12. Եսա. բ. 11. 12. 17. ե. 15.
Դան. դ. 37.

Ն.Ք. գ.Ք.
1018

Յոբ. ԻԹ. 3 ։ Սաղ. ԻԷ. 1 ։
Օր. ԼԲ. 4 ։ Դան. Գ. 37 ։ Յայտ. ԺԵ. 3 ։
Սաղ. ԺԲ. 6 ։ Առակ. Լ. 5 ։
Թագ. Բ. 2 ։ Ես. ԽԵ. 5, 6 ։
Եւ. ԺԵ. 2 ։ Սաղ. ԻԷ. 1 ։ ԻՐ. 7, 8 ։ ԼԱ. 4 ։ Ես. ԺԲ. 2 ։
Եբր. ԺԳ. 21 ։ Օր. ԺԸ. 13 ։ Յոբ. ԻՐ. 3 ։ Սաղ. ՃԱ. 2, 6 ։
Գղ. Բ. 18 ։ Ամբ. Գ. 19 ։
Օր. ԼԲ. 13 ։ Ես. ԼԴ. 16 ։
Սաղ. ՃԽԴ. 1 ։
Կամ՝ բազուկներովս պղնձէ աղեղ մը կը կոտրուի ։
Առակ. Դ. 12 ։
Մաղ. Դ. 3 ։
Սաղ. ԺԸ. 32, 39 ։
Սաղ. ԽԴ. 5 ։
Կամ՝ վիզը ինծի տուիր. Ծն. ԽԹ. 8 ։ Ել. ԻԳ. 27 ։ Յես. Ժ. 24 ։
Կամ՝ Նայեցան.
Յոբ. ԻԷ. 9 ։ Առակ. Ա. 28 ։ Ես. Ա. 15 ։ Միք. Գ. 4 ։
Թագ. ԺԳ. 7 ։ Սաղ. ԼԵ. 5 ։ Դան. Բ. 35 ։
Ես. Ժ. 6 ։ Միք. Է. 10 ։ Զաք. Ժ. 5 ։
Գղ. Գ. 1 ։ Ե. 1 ։ ԺԹ. 9. 14 ։ Ի. 1, 2, 22 ։
Օր. ԻԸ. 13 ։ Գղ. Ը. 1-14 ։ Սաղ. Բ. 8 ։
Ես. ԾԵ. 5 ։
Օր. ԼԳ. 29 ։ Սաղ. ԿԶ. 3 ։ ՁԱ. 15 ։
Եբր. ստեցին.
Միք. Է. 17 ։

բարտաւաններուն վրայ է, որ զանոնք ցածցընես ։
29 Քանզի իմ ճրագս դուն ես, ով Տէր. ու իմ խաւարս Տէրը կը լուսաւորէ ։
30 Վասն զի քեզմով գունդի մը վրայ կը վազեմ, ու իմ Աստուծովս պարիսպէ կ'անցնիմ ։
31 Աստուծոյ ճամբան կատարեալ է. Տէրոջը խօսքերը փորձուած են. անիկայ ամէն իրեն յուսացողներուն ասպար է ։
32 Քանզի Տէրոջմէն զատ ով է Աստուած. կամ մեր Աստուծմէն զատ ով է վէմ ։
33 Իմ զօրաւոր բերդս Աստուած է. ու իմ ճամբաս կատարեալ կ'ընէ ։
34 Իմ ոտքերս եղջերուի ոտքերուն պէս կ'ընէ, ու իմ բարձր տեղերուս վրայ զիս կը կայնեցընէ ։
35 Ձեռքերս պատերազմի կը վարժէ. ու իմ բազուկներս պղնձէ աղեղ կը լարեն ։
36 Ինծի նաև քու փրկութեանդ ասպարը տուիր. ու քու քաղցրութիւնդ զիս մեծցուց ։
37 Իմ քալելու ճամբաս ներքևս լայնցուցիր. ու իմ ոտքիս յօդուածները չսասանեցան ։
38 Իմ թշնամիներս հալածեցի, ու զանոնք ջարդեցի. ու ետ չդարձայ՝ մինչև որ զանոնք հատցուցի ։
39 Եւ զանոնք հատցուցի, գետինը զարկի, որ չկանգնին. անոնք իմ ոտքերուս տակը ինկան ։
40 Ու պատերազմի համար՝ ինծի զօրութիւն հագցուցիր. և իմ վրաս ելլողները տակս ձգեցիր ։
41 Ու իմ թշնամիներուս կռնակը ինծի դարձընել տուիր, որ զիս ատողները ջարդեմ ։
42 Աղաղակեցին, բայց ազատող չկար. Տէրոջը աղաղակեցին, բայց անոնց պատասխան չտուաւ ։
43 Ան ատենը զանոնք երկրի փոշիին պէս մանրեցի. զանոնք փողոցներուն ցեխին պէս կոխեցի ու ճմլեցի ։
44 Եւ իմ ժողովուրդիս կռիւներէն զիս ազատեցիր. ու զիս պահեցիր, որ ազգերու գլուխ ըլլամ. ու իմ չգիտցած ժողովուրդս ինծի ծառայեց ։
45 Օտարները ինծի խոնարհութիւն ըրին. իրենց ականջներովը լսածնուն պէս ինծի հնազանդեցան ։
46 Օտարները տկարացան, ու իրենց պահուըտած տեղերէն դողացին ։
47 Տէրը կենդանի է. ու իմ Վէմս օրհնեալ ըլլայ. և իմ փրկութեանս վէմը Աստուած բարձր ըլլայ ։
48 Աստուած է որ իմ վրէժս կը խնդրէ, ու ժողովուրդները ինծի կը հնազանդեցընէ ։
49 Իմ թշնամիներէս զիս հանելով՝ զիս իմ վրաս ելլողներէն աւելի բարձրացուցիր. ու բռնաւոր մարդէն ազատեցիր ։
50 Ասոր համար ով Տէր՝ ազգերուն մէջը քեզ պիտի գովեմ, ու քու անուանդ սաղմոս պիտի երգեմ ։
51 Իր թագաւորին փրկութիւնները մեծցընողը՝ ու իր օծեալին՝ Դաւիթին ու անոր սերունդին յաւիտեան ողորմութիւն ընողը Ան է ։

## ԳԼ. ԻԳ

1 Դաւիթ իր վերջին խօսքերուն մէջ կը խոստովանի Աստուծոյ խոստմանը վրայ իր ունեցած հաւատքը ։ 6 Չարերուն վիճակին ստորագրութիւնը ։ 8 Դաւիթին զօրաւոր մարդոցը համրանքը ։

1 Ասոնք են Դաւիթին վերջին խօսքերը ։
Յեսսէի որդին Դաւիթ կ'ըսէ. Ան մարդը որ բարձրացաւ, Յակոբայ Աստուծոյն օծեալը, ու Իսրայէլի վայելուչ երգերը շարադրողը, կ'ըսէ.
2 Տէրոջը Հոգին ինծմով խօսեցաւ. ու անոր խօսքը իմ լեզուիս վրայ էր ։
3 Իսրայէլին Աստուածը ըսաւ. Իսրայէլին Վէմը ինծի խօսեցաւ, ըսելով. Մարդոց վրայ իշխողը արդար ըլլայ. ու Աստուծոյ վախովը իշխէ ։
4 Ան ատենը առաւօտեան լոյսին կը նմանի, որ արևուն ծագած ատենը կ'ըլլայ. անանկ առաւօտի մը՝ որ առանց ամպի է. ու անձրևէն ետքը գետնէն կանանչ խոտը կը բուսցընէ ։
5 Թէև իմ տունս Աստուծոյ քովը այսպէս չէ, Սակայն ինծի հետ յաւիտենական ուխտ մը ըրաւ, որ ամէն բանի մէջ պատրաստ ու հաստատ է. քանզի իմ բոլոր փրկութիւնս ու իմ բոլոր բաղձանքս ան է, ու պիտի չծաղկեցընէ՞ զան ։
6 Բայց բոլոր անօրէնները՝ դուրս նետուած փուշերու պէս պիտի ըլլան. քանզի անոնք ձեռքով չեն բռնուիր.
7 Եւ անոնց դպչելու մարդը երկաթը ու նիզակին բունը իրեն զէնք պիտի ընէ՝ ու իրենց եղած տեղը՝ բոլորովին կրակի մէջ պիտի այրին.
8 Դաւիթին զօրաւոր մարդոցը ա.

Ն. Ք. գ.Ք.
1018

Սաղ. ՀԹ. 26 ։
Ա Թագ. ԻԵ. 39 ։ Գղ. ԺԸ. 19. 31 ։
Սաղ. ՃԽԴ. 2 ։
Սաղ. ՃԽ. 1 ։
Հռով. ԺԵ. 9 ։
Սաղ. ՃԽԴ. 10 ։
Սաղ. ՀԹ. 20 ։
Գղ. Է. 12. 13 ։ Սաղ. ՀԹ. 29 ։

Գղ. Է. 8. 9 ։ Սաղ. ՀԸ. 70. 71 ։ ՀԹ. 27 ։
Ա Թագ. ԺԶ. 12. 13 ։ Սաղ. ՀԹ. 20 ։
Բ Պետ. Ա. 21 ։
Բ Օր. ԼԲ. 4. 31 ։ Գղ. ԻԲ. 2, 32 ։
Սաղ. ՃԺ. 2 ։
Ել. ԺԲ. 21 ։ Բ Մն. ԺԹ. 7. 9 ։
Դատ. Ե. 31 ։ Սաղ. ՀԹ. 36 ։ Առակ. Դ. 18 ։ Ովս. Զ. 3 ։ Տես Սաղ. ՃԺ. 3 ։
Գղ. Է. 15. 16 ։ Սաղ. ՀԹ. 29 ։ Ես. ԾԵ. 3 ։
Կամ՝ չի՞ ծաղկեցըներ
Եբր. լեցուի.

Ն · Ք · ԴՔ ·
1018

* Կամ՝ աթոռը նստող
† Կամ՝ իր նիզակը վերցուց ութը հարիւր մարդոց վրայ . ու զանոնք մէկէն մեռցուց ։
ը Տես ա Մն. ժա. 11 ։ իէ. 2 ։
ժ ա Մն. ժա. 12 ։ իէ. 4 ։
է ա Մն. ժա. 27 ։
ւ Տես ա Մն ժա. 13. 14.
‡ Կամ՝ Քաղաքի մէջ ժողովուեցան .
խ ա Մն. ժա. 15 ։
‖ Կամ՝ գլխաւորներուն
ծ ա Թագ. իբ. 1 ։
կ Գղ. ե. 18 ։
հ ա Թագ. իբ. 4. 5 ։
յ Ղե. ժէ. 10 ։
ղ ա Մն. ժա. 20 ։

նուններն ասոնք են . *Ցօւէբ բա-
սեբեթ՝ Թաhքեմոնացին , որ զօրա-
վարներուն գլխաւորն էր . անիկայ
†է Ասօնացի Ադինօն , որ անգամ
մը ութը հարիւր մարդը մէկէն մեռ-
ցուց ։
9 Եւ անկէ ետքը ժԱքուքացի
Դովդային որդին Եղիազարը՝ որ
Դաւիթին հետ եղող իրեք զօրա-
ւորներուն մէկն էր , երբոր անոնք
պատերազմելու համար հոն ժող-
վուած Փղշտացիները նախատեցին ,
10 ու Իսրայէլի մարդիկը փախան , Ա-
սիկայ ելաւ , ու Փղշտացիները
զարկաւ , մինչև որ ձեռքը յոգնե-
ցաւ , ու ձեռքը իր սուրին վրայ
փակաւ , և Տէրը ան օրը մեծ փըր-
կութիւն ըրաւ . ու ժողովուրդը
անոր ետևէն դարձաւ , միայն կո-
ղոպուտը առնելու համար ։
11 Եւ անկէ ետքը էԱրարացի Ա-
գէին ւորդին Սամման էր . Ու
Փղշտացիք ‡գունդ մը կազմեցին՝ .
ու հոն ոսպով լեցուն ագարակ մը
կար . և ժողովուրդը Փղշտացւոց
12 առջևէն փախաւ . Բայց անիկայ
ագարակին մէջտեղը կայնեցաւ ,
զանիկայ պաշտպանեց , ու Փղշտա-
ցիները զարկաւ . և Տէրը մեծ
փրկութիւն ըրաւ ։
13 Ու խերսուն ‖զօրավարներուն իրե-
քը իջան , և հունձքի ատենը ծՈդոզո-
մի քարայրը՝ Դաւիթին եկան . ու
Փղշտացւոց մէկ գունդը կՌափայնոց
14 հովիտին մէջը բանակեր էր ։ Եւ
ան ատենը Դաւիթ հբերդին մէջն
էր . ու ան ատենը Փղշտացիք
Բեթղէհեմի մէջ բերդապահ զօրք
15 ունէին ։ Եւ Դաւիթ փափաքելով
ըսաւ . Բեթղէհեմին դուռը եղող
ջրհորէն ո՞վ ինծի ջուր կը խմցնէ ։
16 Ան ատենը աս իրեք զօրաւորները՝
Փղշտացւոց բանակը ճեղքեցին ան-
ցան , ու Բեթղէհեմին դուռը եղող
ջրհորէն ջուր քաշեցին , ու առին
Դաւիթին տարին . բայց անիկայ
չուզեց անկէ խմել , հապա զանի-
կայ թափելով՝ Տէրոջը նուիրեց .
17 Ու ըսաւ . Ով Տէր , քաւ լիցի
որ ես աս բանը ընեմ . իրենց
կեանքը վտանգի մէջ դնելով գա-
ցող մարդիկներուն յարիւնը խմեմ .
ու անկէ խմել չուզեց ։ Ասոնք են
ան իրեք զօրաւոր մարդիկներուն
ըրածները ։
18 Եւ Շարուհեան Յովաբին եղ-
բայրը ղԱբեսսա ան իրեք մարդոց
գլխաւորն էր . ու անիկայ իր նի-
զակը իրեք հարիւր մարդոց վրայ
վերցընելով՝ սպաննեց զանոնք . ու
անիկայ իրեքին մէջը անուանի էր ։
19 Եւ անիկայ իրեքէն աւելի համա-
րում ունենալուն համար , անոնց
գլուխ եղաւ . բայց առջի իրեքին
աստիճանին չհասաւ ։
20 Ու մեծ գործքեր գործող ճԿաբե-
սէելացի զօրաւոր մարդու մը որ-
դւոյն Յովիադային որդին Բանեան՝
մՄովաբին երկու զօրաւոր մար-
դիկները մեռցուց . նաև ձիւնի
ժամանակ իջաւ՝ ու գուբին մէջը
21 առիւծը մեռցուց ։ Ասիկայ շե-
րեփի Եգիպտացի մարդ մըն ալ
մեռցուց . ու Եգիպտացիին ձեռքը
մէկ նիզակ մը կար . բայց բանի-
ցուպով մը անոր վրայ իջաւ ,
ու Եգիպտացիին ձեռքէն նիզակը
յափշտակեց , և զանիկայ իր նի-
22 զակովը մեռցուց ։ Յովիադայի
որդին Բանեան աս բաները ըրաւ ,
ու իրեք զօրաւորներուն մէջը ա-
23 նուանի եղաւ . Երսունէն աւելի
պատիւ ունէր . բայց առջի իրեքին
աստիճանին չհասաւ . ու Դաւիթ
զանիկայ իր նատեանին վերակացու
դրաւ ։
24 Յովաբին եղբայրը ղԱսայէլ եր-
սունէն էր . նաև Բեթղէհեմացի
25 Դովդայի որդին Եղէանան , ոՀա-
րօդացի Սամմա , Յարօդացի Եղի-
26 կա , §Փէլլատացի Քեղղէս , Թե-
27 կուացի Եկգեսի որդին Իրաս , Ա-
նաթովթացի Աբիեզեր , Ովսացի
28 Մեբունայ , Աքուքացի Սելմօն ,
29 Նետոփաթացի Մաարայ , Նետո-
փաթացի Բաանայի որդին Ալաբ .
Բենիամինի որդւոցը Գաբաայէն՝
30 Ռիփայի որդին Եթթի , Փարա-
թօնացի Բանեա , ՆԳաասի Դձո-
31 րերէն Ադդայի , Արաբաթացի Ա-
բիելբոն , Բարումացի Ազամօթ ,
32 Սաղաբինացի Եղիաբա , Հասենի
33 որդիներէն՝ Յովնաթան , Արարացի
Սամմա , Արարացի Սարարի որդին
34 Աքիամ , Մաքաթիի որդւոյն Ա-
հասբային որդին Եղիփաղէտ , Գե-
ղոնացի Աքիտոփելի որդին Եղիամ ,
35 Կարմելացի Ասարէ , Արբացի Փաա-
36 րայ , Սուբացի Նաթանի որդին
37 Իգաղ , Գադացի Բանի , Ամմոնա-
ցի Սելէկ , Շարուհեան Յովաբին
կապարճակիրը Բերովթացի Նաա-
38 րա , ՁՅեթերացի Իրաս , ԸեԹերա-
39 ցի Գարեբ , ~Քետացի Ուրիա . ա-
մէնը երսունուեօթն էին ։

Ն · Ք · ԴՔ ·
1018

ճ Յես. ժե. 21 ։
մ Ել. ժե. 15 ։ ա Մն. ժա. 22 ։
յ ա Մն. ժա. 23 ։
ն ա Թագ. իր. 14 ։ Գւ. ր. 18 ։ ի. 23 ։
Նեւ Գւ. բ. 18 ։
ո Տես ա Մն. ժա. 27 ։
§ Կամ՝ Փելոնացի . տես ա Մն. ժա. 27 ։
Ն Դատ. բ. 9 ։
Ղ բ Օր. ա. 24 ։
Ջ Գւ. ի. 26 ։
~ Գւ. ժա. 3. 6 ։

## ԳԼ · ԻԴ

1 Դաւիթ՝ Սատանայէն փորձուելով , կը ստիպէ Յովաբը որ երթայ ժողովուրդը համրէ ։ 5 Զօրապետները ինը ամսու ու քսան օրուան մէջ մէկ միլիոն իրեք հարիւր հազար պատերազմական մարդոց համրը կը բերեն ։ 10 Գադին միջոցովը՝ իրեք հարուած կ'առաջարկուի Դաւիթին , որ կը զղջայ . ու իրեք օրուան ժանտախտը կ'ընտրէ ։ 15 Եօթանասուն հազար մարդոց մեռնելէն ետքը՝ Դաւիթ ապաշխարելով՝ Երուսաղեմի կործանմանը առջևը կ'առնէ ։ 18 Դաւիթ՝ Գադին ծանուցանելո-

Ն․Ք․ ԳՔ․ 1017

*Կը Ոռնային կալը ծախու կ'առնէ․ ուր տեղ, զոհ մատուցանելով՝ ժանտախտը կը դադարի՛*

1 Ու ա Տէրոջը բարկութիւնը նորէն
Իսրայէլի վրայ բորբոքեցաւ․
ու բ Դաւիթը անոնց դէմ գրգռեց,
ըսելով․ գ Գնա Իսրայէլը ու Յու-
2 դան համրէ ։ Ու Թագաւորը իր
քովը եղող Յովաբ զօրապետին
ըսաւ․ Իսրայէլի բոլոր ցեղերուն
մէջը՝ դ Դանէն մինչև Բերսաբէէ
պտըտէ․ ու ժողովուրդը համրե-
ցէք, որ ե ժողովուրդին թիւը
3 գիտնամ ։ Ու Յովաբ ըսաւ Թա-
գաւորին․ Քու Տէր Աստուածդ՝
ժողովուրդը որչափ որ է, հարիւ-
րապատիկ աւելցընէ, ու իմ
Թագաւոր տիրոջս աչքերը տեսնեն․
բայց իմ Թագաւոր տէրս ինչու
4 համար ասիկա կը ցանկայ ։ Ու
երբոր Թագաւորին խօսքը Յո-
վաբին ու զօրավարներուն վրայ
սաստկացաւ, Յովաբը զօրավար-
ներուն հետ Թագաւորին առջևէն
ելաւ, որ Իսրայէլի ժողովուրդը
5 համրէ ։ Ու Յորդանանէն անցան․
ու Գադի ձորին մէջը եղող քաղա-
քին աջ կողմը՝ զ Արոէրը բանակե-
6 ցան․ ետքը է Յազերը, Ու Գա-
ղաադը ու Թաբթիմադասի երկիրը
եկան․ անկէ ը Դանեանը, ու Սի-
7 դոնի շրջակաները եկան ։ Ու անկէ
Տիւրոսի ամրոցը՝ ու Խեւացւոց ու
Քանանացւոց ամէն քաղաքները
գացին․ և Յուդայի հարաւային
8 կողմը՝ Բերսաբէէն ելան ։ Ու բո-
լոր երկիրը պտըտեցան․ և ինը ա-
միսէն ու քսան օրէն ետքը՝ Երու-
9 սաղէմ դարձան ։ Ու Յովաբ ժո-
ղովուրդին համրանքին ցուցակը
Թագաւորին տուաւ ։ թ Ու Իսրա-
յէլի մէջ ութը հարիւր հազար սուր
քաշող պատերազմական մարդ կար․
և Յուդայեանք հինգ հարիւր հա-
զար մարդ էին ։
10 Ու ժ Դաւիթ ժողովուրդը համ-
րելէն ետքը՝ իր խղճմտանքը զինքը
դրդեց․ ու Դաւիթ Տէրոջը ըսաւ․
Աս ընելովս ի մեծ մեղք գործեցի․
ով Տէր՝ հիմա քու ծառայիդ ան
մեղքը ներէ․ քանզի լ մեծ յիմա-
11 րութիւն ըրի ։ Ու երբոր Դաւիթ
առաւօտուն ելաւ, Տէրոջը խօսքը
Դաւիթին խ տեսանողին՝ ծ Գադ
12 մարգարէին եղաւ, ըսելով․ Գնա
ու Դաւիթին ըսէ․ Տէրը այսպէս
կ'ըսէ․ Ես քեզի իրեք բան կ'առա-
ջարկեմ․ անոնցմէ մէկը ընտրէ որ
13 քեզի ընեմ ։ Ու Գադ՝ Դաւիթին
գալով՝ անոր պատմեց, ու անոր ը-
սաւ․ կ Եօթը տարի քու երկրիդ
վրայ սո՞վ ըլլայ, կամ իրեք ամիս
քու թշնամիներուդ երեսէ՞ն փախ-
չիս, ու անոնք քեզ հալածեն, կամ
թէ՝ իրեք օր քու երկրիդ վրայ
ժանտախտ ըլլայ․ հիմա մտածէ ու
տես՝ թէ ինչ պատասխան տանիմ
14 զիս խրկողին ։ Ու Դաւիթ՝ Գա-
դին ըսաւ․ Խիստ մեծ նեղութեան
մէջ եմ․ հիմա Տէրոջը ձեռքը իյ-
նանք, հ քանզի անոր գթութիւնը
շատ է․ ու ձ մարդու ձեռք չիյնամ ։
15 Ու ղ Տէրը ան առաւօտէն մինչև
որոշուած ժամանակը՝ Իսրայէլին
վրայ ժանտախտ խրկեց․ ու Դանէն
մինչև Բերսաբէէ՝ ժողովուրդէն եօ-
թանասուն հազար մարդ մեռաւ ։
16 ճ Ու Աստուծոյ հրեշտակը ձեռքը Ե-
րուսաղէմին վրայ երկընցուց, որ
զանիկայ ջնջէ․ ու աս չարիքին
վրայ՝ մ Տէրոջը սիրտը իջաւ, ու
ժողովուրդը ջնջող հրեշտակին ը-
սաւ․ Հերի՛ք է․ այլ ձեռքդ քաշէ․
ու Տէրոջը հրեշտակը յ Յեբուսացի
17 Ոռնային կալին քովն էր ։ Ու Դա-
ւիթ՝ ժողովուրդը զարնող հրեշ-
տակը տեսնելով, Տէրոջը ըսաւ․
Ահա ն ես մեղանչեցի, ու ես անօ-
րէնութիւն ըրի․ բայց աս ոչխար-
ները ի՞նչ ըրին․ կ'աղաչեմ՝ քու
ձեռքդ իմ վրաս ու իմ հօրս տանը
վրայ ըլլայ ։
18 Ու նոյն օրը Գադ՝ Դաւիթին ե-
կաւ, ու անոր ըսաւ․ շ Ելի՛ր՝ Յե-
բուսացի Ոռնային կալին մէջ Տէրո-
19 ջը սեղան մը կանգնէ ։ Ու Դա-
ւիթ՝ Գադին ըսածին համեմատ վեր
ելաւ, ինչպէս որ Տէրը պատուիրեր
20 էր ։ Ու Ոռնա նայեցաւ․ ու երբ-
որ տեսաւ որ Թագաւորը և անոր
ծառաները դէպ 'ի իրեն կու գան,
Ոռնա ելաւ․ ու երեսը մինչև գե-
տինը երկրպագութիւն ըրաւ Թա-
21 գաւորին ։ Ու Ոռնա ըսաւ․ Ար-
դեօք ի՞նչ պատճառով իմ Թագա-
ւոր տէրս իր ծառային եկաւ ։ ո Ու
Դաւիթ ըսաւ․ Աս կալը քեզմէ
ծախու առնելու, ու Տէրոջը սեղան
մը շինելու համար, որ ժողովուրդին
22 վրայէն չ հարուածը վերնայ ։ Ու
Ոռնա ըսաւ Դաւիթին․ Իմ Թա-
գաւոր տէրս զինչ որ ուզէ՝ առնէ, ու իր
աչքերուն հաճոյ երևցածին պէս
զոհ ընէ․ պ ահա եզները ողջակէզի
համար, կամնասայլերը ու եզներուն
գործիքները փայտի համար ըլլան ։
23 Ասոնց ամէնը † Ոռնա՝ Թագաւորի
մը պէս՝ Թագաւորին տուաւ․ ու
Ոռնա՝ Թագաւորին ըսաւ․ Քու
Տէր Աստուածդ Քեզ ընդունի ։
24 Բայց Թագաւորը Ոռնային ըսաւ․
Չէ․ հապա ես անշուշտ քեզմէ ստա-
կով ծախու պիտի առնեմ, ու ձրի
առնուած իմ Տէր Աստուծոյս ողջակէզ
պիտի չմատուցանեմ ։ Ու ռ Դաւիթ
կալը ու եզները յիսուն սիկղ ար-
25 ծաթի ծախու առաւ ։ Ու Դաւիթ

Ն․Ք․ ԳՔ․ 1017

ա Գլ․ ԻԱ․ 1․ բ Տեռ․ ԱՄՆ․ ԻԱ․ 1․ Յակ․ Ա․ 13․ 14․ գ ԱՄՆ․ ԻԷ․ 23․ 24․ դ Դատ․ Ի․ 1․ ե Երեմ․ ԺԷ․ 5․ զ ԲՕր․ Բ․ 36․ Յես․ ԺԳ․ 9․ 16․ է Թուե․ ԼԲ․ 1․ 3․ ը Կամ՝ Դանի անտառ․ որ․ տես Յես․ ԺԹ․ 47․ Դատ․ ԺԸ․ 29․ ը Յես․ ԺԹ․ 29․ Դատ․ ԺԸ․ 28․ թ Տես ԱՄՆ․ ԻԱ․ 5․ ժ Ա Թագ․ ԻԴ․ 5․ ի Գլ․ ԺԲ․ 13․ լ Ա Թագ․ ԺԳ․ 13․ խ Ա Թագ․ Թ․ 9․ ԱՄՆ․ ԻԹ․ 29․ ծ Ա Թագ․ ԻԲ․ 5․ կ Տես ԱՄՆ․ ԻԱ․ 12․

հ Սաղ․ ՃԳ․ 8․ 13․ 14․ ՃԺԹ․ 156․ ձ Եսա․ ԽԷ․ 6․ Զաք․ Ա․ 15․ ղ ԱՄՆ․ ԻԱ․ 14․ ԻԷ․ 24․ ճ Ել․ ԺԲ․ 23․ ԱՄՆ․ ԻԱ․ 15․ մ Ծնն․ Զ․ 6․ Ա Թագ․ ԺԵ․ 11․ Յովել․ Բ․ 13․ 14․ յ ԱՄՆ․ ԻԱ․ 15․ Տես Հմր․ 18․ Բ ԱՄՆ․ Գ․ 1․ ն ԱՄՆ․ ԻԱ․ 17․ շ ԱՄՆ․ ԻԱ․ 18․ Ա․ ո Տես Ծնն․ ԻԳ․ 8–16․ չ Թուե․ ԺԶ․ 48․ 50․ պ Գ Թագ․ ԺԹ․ 21․ † Եբր․ Ոռնա Թագաւորը․ Ք Եզեկ․ Ի․ 40․ 41․ ռ Տես ԱՄՆ․ ԻԱ․ 24․ 25․

Ն․Ք․ ԳՔ․ 1017
ª Գլ․ խա․ 14։

հոն Տէրոջը սեղան չինեց , ու անոր
վրայ ողջակէզներ ու խաղաղու-
թեան զոհեր մատուց ։ ª Եւ Տէրը
լսեց անոր աղօթքը երկրին համար ,
ու Իսրայէլին վրայէն հարուածը
վերցաւ ։

Ն․ Ք․ ԳՔ․ 1017
Հ Հմր 21։

* Կամ Ա․ ԹԱԳԻՆ ԳԻՐՔ ԹԱԳԱ-ՒՈՐԱՑ

# *ԵՐՐՈՐԴ ԳԻՐՔ ԹԱԳԱՒՈՐԱՑ

Ն․ Ք․ ԳՔ․ 1015

## ԳԼՈՒԽ Ա

1 Աբիսակ կը ջերմցնէ Դաւիթը՝ անոր ծերու-
թեան ատենը ։ 5 Ադոնիա՝ Դաւիթին սիրե-
լի որդին թագաւորութիւնը յափշտակելու կը
համարձակի ։ 11 Նաթանին խրատովը՝ 15
Բերսաբէն թագաւորը կը դրդէ , 22 ու Նա-
թան ձեռնտու կ'ըլլայ անոր ։ 28 Դաւիթ կը
նորոգէ իր խոստումները՝ որ Բերսաբէին ըրած
էր ։ 32 Սողոմոն՝ Դաւիթին հրամանովը՝
Սադովկին ու Նաթանին ձեռօքը թագաւոր
կ'օծուի . ու ժողովուրդը ուրախութեան հան-
դէսը կը կատարէ ։ 41 Ցոփսաթան աս լուրը
առնելով , Ադոնիային կոչնականները կը ցը-
րուին ։ 50 Ադոնիա սեղանին եղջիւրներուն
քովը կը փախչի . իսկ Սողոմոն կ'արձակէ զա-
նիկայ այն պայմանով՝ որ այնուհետեւ բարի
վարմունք մը ունենայ ։

1 Եւ Դաւիթ թագաւորը ծերացած
ու տարիքը առած ըլլալով ,
զանիկայ հանդերձներով կը ծած-
2 կէին , բայց չէր տաքնար ։ Եւ
ծառաները անոր ըսին . Մեր թա-
գաւոր տիրոջը համար մէկ կոյս
աղջիկ մը փնտռեն՝ որ թագաւորին
առջեւը կայնի , զանիկայ ջերմցնէ ,
ու անոր ծոցը պառկի , որ մեր
3 թագաւոր տէրը տաքնայ ։ Ու Իս-
րայէլի բոլոր սահմաններուն մէջ
մէկ գեղեցիկ աղջիկ մը փնտռեցին .
և ª Սունամացի Աբիսակը գտան ,
ու զանիկայ թագաւորին բերին ։
4 Եւ ան աղջիկը խիստ գեղեցիկ էր .
ու անիկայ թագաւորը կը ջերմցը-
նէր , ու անոր սպասաւորութիւն
կ'ընէր . բայց թագաւորը զանիկայ
չգիտցաւ ։
5 Ան ատենը ᵇ Անգիթի որդին Ա-
դոնիան հպարտացաւ ու ըսաւ . Ես
թագաւոր ըլլամ . և ᶜ իրեն համար
կառքեր ու ձիաւորներ պատրաս-
տեց , և յիսուն մարդ , որ իր առ-
6 ջեւէն վազեն ։ Եւ անոր հայրը ա-
նոր կենացը մէջ ամենեւին յանդի-
մանած չէր զանիկայ , ըսելով թէ՝
Ինչու այդպէս ըրիր . և անիկայ
խիստ գեղեցիկ էր . ᵈ ու անոր մայրը
զանիկայ Աբիսողոմէն ետքը ծներ
7 էր ։ Եւ անիկայ խօսքը մէկ ըրաւ
Շարուհեայի որդւոյն Յովաբին
հետ , ու ᵉ Աբիաթար քահանային
հետ , որոնք Ադոնիային հետեւե-
լով՝ անոր օգնութիւն կ'ընէին ։
8 Բայց Սադովկ քահանան , ու Յո-
վիադայի որդին Բանեան , և Նա-
թան մարգարէն , ու ᶠ Սեմէին , և
Ռէին , ու ᵍ Դաւիթին զօրաւոր
մարդիկները՝ Ադոնիային հետ չէ-
9 ին ։ Եւ Ադոնիա ʰ Ռոգելի աղբիւ-
րին մօտ եղող Զոհելթի քարին
քովը՝ ոչխարներ , արջառներ ու
գէր անասուններ մորթեց . և իր
ամէն եղբայրները՝ թագաւորին
որդիքը , ու Յուդայի բոլոր մար-
դիկները՝ թագաւորին ծառաները
10 հրաւիրեց . Բայց Նաթան մարգա-
րէն , ու Բանեան , և զօրաւորները ,
ու իր Սողոմոն եղբայրը չհրաւի-
րեց ։
11 Եւ Նաթան՝ Սողոմոնին մօրը
Բերսաբէին հետ խօսեցաւ՝ ու ը-
սաւ . Չլսեցի՞ր որ ⁱ Անգիթի որդին
Ադոնիան թագաւոր եղաւ , ու մեր
12 տէրը Դաւիթ չիմացաւ ։ Ուրեմն
հիմա եկուր քեզի խրատ մը տամ ,
որ քու կեանքդ ու քու որդւոյդ
13 Սողոմոնին կեանքը ազատես ։ Ելի՛ր
Դաւիթ թագաւորին քովը գնա ,
ու անոր ըսէ . Ով Տէր իմ թա-
գաւոր՝ դուն քու աղախինիդ եր-
դում չըրի՞ր , ու չըսի՞ր որ՝ ʲ Ինծ-
մէ ետքը քու որդիդ Սողոմոնը թա-
գաւոր պիտի ըլլայ , և իմ աթոռս
անիկայ պիտի նստի . ու ինչու
համար Ադոնիան թագաւոր եղաւ ։
14 Ահա դուն ան տեղը թագաւորին
հետ խօսած ատենդ՝ ես ալ ետեւէդ
կու գամ , ու քու խօսքերդ կը լը-
րացընեմ ։
15 Եւ Բերսաբէ՝ ներքին սենեակը
մտաւ թագաւորին քովը . և թա-
գաւորը շատ ծերացած էր . ու
Սունամացի Աբիսակը թագաւորին
16 սպասաւորութիւն կ'ընէր ։ Եւ
Բերսաբէ գլուխը ծռեց , ու թա-
գաւորին երկրպագութիւն ըրաւ ։
Ու թագաւորը ըսաւ . Ի՞նչ կ'ու-
17 զես ։ Եւ անիկայ ըսաւ անոր .
Ո՛վ Տէր իմ , ᵏ դուն քու աղախի-
նիդ՝ քու Տէր Աստուծոյդ անու-
նովը երդում ըրիր , ըսելով . Ինծմէ
ետքը քու որդիդ Սողոմոնը թա-
գաւոր պիտի ըլլայ , ու իմ աթոռս
18 ան պիտի նստի . Եւ ահա հիմա

Ն․ Ք․ ԳՔ․ 1015
ª Ցես․ ԺԹ․ 18։
ᵇ Բ Թագ․ Գ․ 4։
ᶜ Բ Թագ․ ԺԵ․ 1։
ᵈ Բ Թագ․ Գ․ 3, 4։ ու Մն․ Գ․ 2։
ᵉ Բ Թագ․ Ի․ 25։
Հ Գլ․ Բ․ 22, 28։
ᶠ Գլ․ Դ․ 18։
ᵍ Բ Թագ․ ԻԳ․ 8։
ʰ Բ Թագ․ ԺԷ․ 17։
ⁱ Բ Թագ․ Գ․ 4։
ʲ Ա Մն․ ԻԲ․ 9։
ᵏ Հմր 13, 30։

Ն․ Ք․ ԳՔ․ 1015

ա Հմր 7, 8. 9, 25։
բ Օր․ լա․ 16։ Գլ․ բ․ 10։
գ Հմր 19։
դ Ա Թագ․ ժ․ 24։
ե Բ Թագ․ դ․ 9։
զ Հմր 17։

Ադոնիան թագաւոր եղած է․ ու
դուն չիմացար, ով տէր իմ թա-
19 գաւոր․ ա Եւ անիկայ շատ արջառ-
ներ՝ ու գէր անասուններ՝ ու ոչ-
խարներ մորթեց, և թագաւորին
բոլոր որդիները, ու Աբիաթար
քահանան, և Յովաբ զօրապետը
հրաւիրեց, բայց քու ծառադ Սո-
20 ղոմոնը չհրաւիրեց։ Հիմա ով տէր
իմ թագաւոր, բոլոր Իսրայէլին
աչքերը քու վրադ են, որ անոնց
իմացընես թէ՝ իմ թագաւոր տի-
րոջս աթոռը իրմէ ետքը ով պիտի
21 նստի․ Եթէ ոչ՝ երբոր իմ թա-
գաւոր տէրս բ իր հայրերուն հետ
քնանայ, ես ու իմ որդիս Սողո-
մոնը յանցաւոր պիտի սեպուինք։
22 Ու երբոր անիկայ թագաւորին
հետ կը խօսէր, Նաթան մարգա-
23 րէն եկաւ։ Եւ թագաւորին ի-
մացուցին ու ըսին թէ՝ Ահա Նա-
թան մարգարէն եկեր․ ու անիկայ
ներս մտաւ թագաւորին առջևը,
ու երեսը մինչև գետինը ծռելով
թագաւորին երկրպագութիւն ը-
24 րաւ․ Եւ Նաթան ըսաւ․ Ով տէր
իմ թագաւոր, դո՞ւն ըսիր որ՝
Ինծմէ ետքը Ադոնիան թագաւոր
պիտի ըլլայ, ու իմ աթոռս անի-
25 կայ պիտի նստի․ գՔանզի անիկայ
այսօր իջաւ, և շատ արջառներ,
ու գէր անասուններ, ու ոչխար-
ներ մորթեց․ և թագաւորին բո-
լոր որդիները, զօրավարները, ու
Աբիաթար քահանան հրաւիրեց․
և ահա անոնք անոր առջևը կ'ու-
տեն, կը խմեն ու կ'ըսեն․ դԿեցցէ
26 արքայ Ադոնիա։ Բայց զիս քու
ծառադ, ու Սադովկ քահանան, և
Յովիադայի որդին Բանեան, ու քու
27 ծառադ Սողոմոնը չկանչեց։ Աս
բանը արդեօք իմ թագաւոր տի-
րոջս ձեռքո՞վը եղաւ, ու քու ծա-
ռայիդ չգիտցուցի՞ր՝ թէ քեզմէ ետ-
քը իմ թագաւոր տիրոջս աթոռը
ո՞վ պիտի նստի։
28 Եւ Դաւիթ թագաւորը պա-
տասխան տուաւ ու ըսաւ․ Բեր-
սաբէն ինծի կանչեցէք։ Եւ անի-
կայ թագաւորին առջևը եկաւ, ու
թագաւորին առջևը կայնեցաւ։
29 Եւ թագաւորը երդում ըրաւ, ու
ըսաւ․ եԻմ անձս ամէն նեղութե-
նէ ազատող Տէրը կենդանի է որ,
30 զԻնչպէս որ քեզի Իսրայէլին Տէր
Աստուծովը երդում ըրի, ու ըսի
թէ՝ Ինծմէ ետքը քու որդիդ Սո-
ղոմոնը թագաւոր պիտի ըլլայ, ու
իմ տեղս իմ աթոռիս վրայ անի-
կայ պիտի նստի, ահա այսօր այն-
31 պէս պիտի ընեմ։ Ան ատենը Բեր-
սաբէն երեսը մինչև գետինը ծռե-
լով թագաւորին երկրպագութիւն

ըրաւ ու ըսաւ․ էԻմ Տէրս Դաւիթ
թագաւորը յաւիտեան ողջ կե-
նայ։
32 Եւ Դաւիթ թագաւորը ըսաւ․
Սադովկ քահանան, ու Նաթան
մարգարէն, և Յովիադայի որդին
Բանեան ինծի կանչեցէք։ Ու ա-
նոնք թագաւորին առջևը եկան։
33 Եւ թագաւորը անոնց ըսաւ․ ըՁեր
տիրոջը ծառաները ձեր հետը ա-
ռէք, ու իմ որդիս Սողոմոնը թիմ
ջորիիս վրայ հեծցուցէք, ու զա-
34 նիկայ ժԳեհոնը իջեցուցէք․ Եւ
Սադովկ քահանան ու Նաթան
մարգարէն իհոն զանիկայ Իսրայէ-
լի վրայ թագաւոր օծեն․ ու լփող
հնչեցուցէք, ու ըսէք․ Կեցցէ ար-
35 քայ Սողոմոն․ Եւ անոր ետևէն
ելէք, ու անիկայ թող գայ ու իմ
աթոռս նստի, և իմ տեղս անիկայ
թագաւոր ըլլայ․ քանզի ես հրա-
ման տուի, որ անիկայ Իսրայէլի
վրայ ու Յուդայի վրայ իշխան ըլ-
36 լայ։ Ան ատենը Յովիադայի որ-
դին Բանեան՝ թագաւորին պա-
տասխան տուաւ, ու ըսաւ․ Ամէն․
իմ թագաւոր տիրոջս Տէր Աս-
37 տուածն ալ այդպէս ըսէ։ խԻնչ-
պէս որ Տէրը իմ թագաւոր տի-
րոջս հետն էր, Սողոմոնին հետն ալ
այնպէս ըլլայ, ու ծանոր աթոռը
իմ տիրոջս Դաւիթ թագաւորին
38 աթոռէն մեծ ընէ։ Ան ատենը
Սադովկ քահանան, Նաթան մար-
գարէն, կու Յովիադայի որդին
Բանեան, և Քերեթիները ու Փե-
լեթիները իջան, ու Սողոմոնը Դա-
ւիթ թագաւորին ջորիին վրայ
հեծցուցին, ու զանիկայ Գեհոն
39 տարին։ Եւ Սադովկ քահանան
խորանէն հեղին եղջիւրը առաւ, ու
մՍողոմոնը օծեց․ և փողը հնչեցու-
ցին, նու բոլոր ժողովուրդը կ'ըսէր․
40 Կեցցէ արքայ Սողոմոն։ Եւ բոլոր
ժողովուրդը անոր ետևէն կ'ելլէին․
ու ժողովուրդը սրինգներ հնչեցը-
նելով մեծ ուրախութեամբ մը
կ'ուրախանային․ անանկ որ անոնց
ձայնէն գետինը * կը դղրդէր։
41 Եւ Ադոնիա ու անոր բոլոր բազ-
մականները լսեցին․ ու անոնք կե-
րակուրէն ելեր էին․ և Յովաբ փո-
ղին ձայնը լսելով՝ ըսաւ․ Ի՞նչ
պիտի ըլլայ աս դղրդման ձայնը որ
42 քաղաքէն կ'ելլէ։ Երբոր անիկայ
տակաւին կը խօսէր, ահա Աբիա-
թար քահանային որդին Յովնա-
թանը եկաւ․ ու Ադոնիա ըսաւ․
Եկուր․ քանզի ոդուն քաջ մարդ
մըն ես, ու բարի աւետիս պիտի
43 տաս։ Եւ Յովնաթան պատաս-
խան տուաւ, ու Ադոնիային ըսաւ․
Շիտակը աս է որ՝ մեր տէրը Դա-

Ն․ Ք․ ԳՔ․ 1015

է Նէեմ․ բ․ 3։ Դան․ բ․ 4։
ը Բ Թագ․ ի․ 6։
թ Տես Եսթ․ զ․ 8։
ժ Բ Մն․ լբ․ 30։
ի Ա Թագ․ ժ․ 1։ ժզ․ 3, 12։ Բ Թագ․ բ․ 4։ ե․ 3։ Գլ․ ժթ․ 16։ Դ Թագ․ թ․ 3։ ժա․ 12։
լ Բ Թագ․ ժե․ 10։ Դ Թագ․ թ․ 13։ ժա․ 14։
խ Յես․ ա․ 5, 17։ Ա Թագ․ ի․ 13։
ծ Հմր 47։
կ Բ Թագ․ ը․ 18։ ի․ 20—23։
հ Ել․ լ․ 23, 25, 32։ Սաղ․ ձթ․ 20։
մ Ա Մն․ իթ․ 22։
ն Ա Թագ․ ժ․ 24։
* Եբր․ կը ճեղքուէր։
ո Բ Թագ․ ժը․ 27։

Ն. Ք. ԳՔ. 1015

ւիթ թագաւորը՝ Սողոմոնը թա-
44 գաւոր ըրաւ. Ու թագաւորը՝ Սա-
դովկ քահանան. և Նաթան մար-
գարէն. ու Յովիադայի որդին Բա-
նեան, և Քերեթիները ու Փելեթի-
ները անոր հետը խրկեց. ու զա-
նիկայ թագաւորին ջորիին վրայ
45 հեծուցին. Եւ Սադովկ քահանան
ու Նաթան մարգարէն զանիկայ
Գեհոնի մէջ թագաւոր օծեցին. ու
անկէ ուրախութեամբ ելան. ու
քաղաքը դղրդեցաւ. Ասիկա ձեր լսած
46 ձայնը ան է. Նաև Սողոմոն՝ թա-
գաւորութեան աթոռին վրայ նըս-
47 տաւ. Եւ թագաւորին ծառաներն
ալ մեր տէրը Դաւիթ թագաւորը
օրհնելու եկան. ու ըսին. Քու
Աստուածդ Սողոմոնին անունը քու
անունէդ աւելի մեծցընէ. ու անոր
աթոռը քու աթոռէդ աւելի բարձ-
րացընէ. Եւ թագաւորը իր ան-
կողինին վրայ երկրպագութիւն ը-
48 րաւ. Նաև թագաւորը այսպէս
ըսաւ. Իսրայէլին Տէր Աստուածը
օրհնեալ ըլլայ, որ այսօր իմ աթո-
ռիս վրայ նստող մը տուաւ, ու իմ
49 աչքերս տեսան. Եւ Ադոնիային
բոլոր կոչնականները զարհուրեցան,
ու ելան և ամէն մէկերնին իրենց
ճամբան գացին։
50 Եւ Ադոնիա Սողոմոնին երեսէն
վախցաւ ու ելաւ գնաց. ու սե-
51 ղանին եղջիւրները բռնեց. Եւ Սո-
ղոմոնին պատմեցին ու ըսին. Ահա
Ադոնիան՝ Սողոմոն թագաւորէն
վախցաւ, և ահա անիկայ սեղանին
եղջիւրները բռնեց, ու ըսաւ. Սո-
ղոմոն թագաւորը այսօր ինծի եր-
դում ընէ որ իր ծառան սրով պիտի
52 չմեռցընէ. Ու Սողոմոն ըսաւ,
Թէ որ անիկայ առաքինի ըլլայ.
անոր մէկ մազը գետինը պիտի չիյ-
նայ. բայց թէ որ անոր վրայ չա-
րութիւն գտնուի, ան ատենը պիտի
53 մեռնի. Եւ Սողոմոն թագաւորը
մարդ խրկեց, ու զանիկայ սեղանէն
վար իջեցուցին. Եւ անիկայ եկաւ.
ու Սողոմոն թագաւորին երկրպա-
գութիւն ըրաւ. ու Սողոմոն անոր
ըսաւ. Տունդ գնա։

## ԳԼ. Բ

1 Դաւիթ պատուէր կու տայ Սողոմոնին. 3 աստուածպաշտութեան համար. 5 Յովաբին համար. 7 Բերզելլիին համար. 8 Սեմէիին համար. 10 ու ինքը կը մեռնի. 12 Սողոմոն՝ Դաւիթին յաջորդը կ'ըլլայ. 13 Ադոնիա՝ որ Բերսաբէին միջոցովը Սողոմոնէն Աբիսակը իրեն կնիկ ըլլալու կ'ուզէ. մահուան կը դատապարտուի. 26 Աբիաթար՝ Ադոնիային կողմն ըլլալուն համար՝ քահանայութենէն կը զրկուի բայց չմեռցուիր. 28 Յովաբ սեղանին եղջիւրներուն քովը կը փախչի ու հոն կը սպաննուի. 35 Բանեան Յովաբին տեղը կ'անցնի. ու Սադովկ Աբիաթարին. 36 Սեմէի՝ Երուսաղէմի մէջ մնալու դաշինքով սրգիլուած ըլլալով գէթ երթալուն համար, մահուան կը դատապարտուի։

1 Ու երբոր Դաւիթին մեռնելու
օրերը մօտեցան, իր որդւոյն
Սողոմոնին պատուէր տուաւ՝ ըսե-
2 լով. Ահա ես ամէն երկրին ճամ-
բան կ'երթամ. իսկ դուն ուժով-
3 ցիր, ու քաջասիրտ եղիր. Եւ
քու Տէր Աստուծոյդ պահպանու-
թիւնը պահէ, որ անոր ճամբանե-
րուն մէջը քալես, ու անոր կանոն-
ները, պատուիրանքները, դատաս-
տանները ու վկայութիւնները պա-
հես, ինչպէս որ Մովսէսին օրինաց
գրքին մէջը գրուած է. որպէս զի
ինչ որ ընես, և ուր որ երեսդ
դարձընես, յաջողութիւն գտնես.
4 Որպէս զի Տէրը իր խօսքը հաստա-
տէ, որն որ ինծի համար խօսեցաւ՝
ըսելով. Եթէ որ քու որդիքդ ի-
րենց ճամբաներուն զգուշութիւն
ընեն, Ու իմ առջևս բոլոր սրտով,
բոլոր հոգիով ու ճշմարտութեամբ
քալեն, Իսրայէլի աթոռին վրայէն
քեզմէ մարդ պակաս պիտի չըլլայ։
5 Եւ դուն գիտես ինչ որ Շարու-
հեայի որդին Յովաբը ինծի ըրաւ,
ու ինչ որ Իսրայէլին երկու զօրա-
վարներուն՝ Ներեան Աբեններին
ու Յեթերեան Ամեսայիին ըրաւ.
քանզի զանոնք մեռցուց. ու խա-
ղաղութեան ատենը պատերազմի
արիւն թափեց, և իր մէջքի գօտիին
ու ոտքի կօշիկներուն վրայ պատե-
6 րազմի արիւն սրսկեց. Ուրեմն դուն
քու իմաստութիւնդ 'ի գործ
դնես, ու անոր ճերմակ մազերը
խաղաղութեամբ գերեզմանը չիջե-
7 ցընես. Բայց Գաղաադացի Բեր-
զելլիին որդւոցը ողորմութիւն ը-
նես. ու քու սեղանէդ ուտողնե-
րուն հետ ըլլան. քանզի երբոր քու
եղբօրդ Աբիսողոմին երեսէն փա-
խայ, ինծի այնպէս մօտեցան.
8 Եւ ահա Բաւուրիմացի Բենիամի-
նեան Գերային որդին Սեմէին քու
քովդ է. ու անիկայ՝ Մանայիմը
գացած օրս՝ ինծի ծանր անէծք
տուաւ. բայց երբոր անիկայ զիս
դիմաւորելու համար Յորդանան ի-
ջաւ. Տէրոջմով երդում ըրի ա-
նոր՝ ու ըսի. Քեզ սրով չեմ մեռ-
9 ցըներ. Եւ հիմա զանիկայ ան-
մեղ չսեպես. քանզի դուն իմաստուն
մարդ ես, ու անոր ինչ ընելիքդ
գիտես. և անոր ճերմակ մազերը
արիւնով գերեզմանը իջեցընես։
10 Ու Դաւիթ իր հայրերուն հետ
քնացաւ. ու Դաւիթի քաղաքին
11 մէջ թաղուեցաւ. Եւ Դաւիթին
Իսրայէլի վրայ թագաւորութիւն
ըրած օրերը քառասուն տարի էր.
եօթը տարի Քեբրոնի մէջ թագա-

Ն. Ք. ԳՔ. 1015

Բ Մն. ԻԹ. 23.
Ժ Հմր 37.
Ա Ծն. ԽԷ. 31.
Գ Գլ. Գ. 6. Սաղ. ՃԼԲ. 11, 12.
Գլ. Բ. 28.
Ա Թագ. ԺԴ. 45. Բ Թագ. ԺԴ. 11. Գործ. ԻԷ. 34.

Ն. Ք. ԳՔ. 1015

Ա Ծն. ԽԷ. 29. Բ Օր. Լա. 14.
Բ Յես. ԻԳ. 14.
* Եբր. Էրիկ մարդ
Գ Բ Օր. ԺԷ. 19, 20.
Դ Բ Օր. ԻԹ. 9. Յես. Ա. 7. Ա Մն. ԻԲ. 12, 13.
Ե Ա Թագ. ԺԲ. 5, 14. 30.
Զ Բ Թագ. Է. 25.
Է Սաղ. ՃԼԲ. 12.
Ը Դ Թագ. Ի. 3.
Թ Բ Թագ. Է. 12, 13. Գլ. Ը. 25.
Ժ Բ Թագ. Գ. 39. ԺԲ. 5. 12, 14. ԺԹ. 5, 6, 7.
Ի Բ Թագ. Գ. 27.
Լ Բ Թագ. Ի. 10.
Խ Հմր 9. Առակ. Ի. 26.
Ծ Բ Թագ. ԺԹ. 31—38.
Կ Բ Թագ. Թ. 7, 10. ԺԹ. 28.
Հ Բ Թագ. ԺԷ. 27.
Ձ Բ Թագ. ԺԶ. 5.
Ղ Բ Թագ. ԺԹ. 18.
Ճ Բ Թագ. ԺԹ. 23.
Մ Ել. Ի. 7. Յոբ. Թ. 28.
Յ Ծն. ԽԲ. 38. ԽԴ. 31.
Ն Գլ. Ա. 21. Գործ. Բ. 29. ԺԳ. 36.
Շ Բ Թագ. Ե. 7.
Ո Բ Թագ. Ե. 4. Ա Մն. ԻԹ. 26, 27.

Ն․ Ք․ ՂՔ․
1015

ւորութիւն ըրաւ , ու երսունուիրեք տարի Երուսաղէմի մէջ թագաւորութիւն ըրաւ ։

ն Ա Մն․ իթ․ 23 ։ Բ Մն․ ա․ 1 ։

12 ն Եւ Սողոմոն իր հօրը Դաւիթին
աթոռը նստաւ . ու անոր թագա-
ւորութիւնը շատ հաստատ եղաւ ։

1014

13 Եւ Ագգիթի որդին Ադոնիան՝
Սողոմոնին մօրը Բերսաբէին գնաց .
ու Բերսաբէն անոր ըսաւ . ղԱր-
դեօք խաղաղութեամբ եկար . ու
անիկայ ըսաւ . Խաղաղութեամբ .

ղ Ա Թագ․ ժզ․ 4, 5 ։

14 Եւ ըսաւ . Քեզի մէկ խօսք մը ու-
15 նիմ . ու անիկայ ըսաւ . Խօսէ . Եւ
անիկայ ըսաւ . Դուն աղէկ գիտես
որ թագաւորութիւնը ջիմս էր ,
ու բոլոր Իսրայէլին երեսը իմ վրաս
էր , որ թագաւոր ըլլամ . բայց
թագաւորութիւնը դարձաւ , ու
իմ եղբօրս եղաւ . քանզի ռանոր

ջ Գլ․ ա․ 5 ։

ռ Ա Մն․ իբ․ 9, 10 ։ իգ․ 5, 6, 7 ։ Առակ․ իա․ 30 ։ Դան․ բ․ 21 ։

16 Տէրոջմէ եղաւ ։ Եւ հիմա ես
քեզմէ մէկ խնդիրք մը կը խնդրեմ .
*ինծի չէ ըսես" ։ Ու Բերսաբէ
17 անոր ըսաւ . Խօսէ՛ ։ Եւ անի-
կայ ըսաւ . Կ'աղաչեմ , Սողոմոն
թագաւորին ըսէ (քանզի անիկայ
քեզի չէ ըսեր , ) որ սՍունամացի
18 Աբիսակը ինծի կնիկ տայ ։ Ու
Բերսաբէ ըսաւ . Աղէկ , ես քեզի
համար թագաւորին կը խօսիմ ։

* Եբր․ իմ երեսս մի դարձըներ ։ Սաղ․ ճլբ․ 10 ։

ս Գլ․ ա․ 3, 4 ։

19 Եւ Բերսաբէ՝ Սողոմոն թագա-
ւորին գնաց , որ Ադոնիային համար
անոր հետը խօսի . ու թագաւորը
զանիկայ դիմաւորելու համար ոտք
ելաւ , ու վանոր երկրպագութիւն
ըրաւ . ու երբոր իր աթոռը նըս-
տաւ , թագաւորին մօրը համար ալ
աթոռ դնել տուաւ . տև անիկայ
20 անոր աջ կողմը նստաւ . Ու ըսաւ .
Ես քեզմէ մէկ պզտիկ խնդիրք մը
կը խնդրեմ . ինծի չէ ըսես ։ Եւ
թագաւորը անոր ըսաւ . Խնդրէ
մայր իմ . քանզի քեզի չէ պիտի
21 ըսեմ ։ Ու անիկայ ըսաւ . Սու-
նամացի Աբիսակը եղբօրդ Ադոնիա-
22 յին կնիկ տրուի ։ Եւ Սողոմոն
թագաւորը պատասխան տուաւ ,
ու իր մօրը ըսաւ . Դուն ինչո՞ւ Ա-
դոնիային համար Սունամացի Աբի-
սակը կը խնդրես . անոր համար
թագաւորութիւնն ալ խնդրէ ,
(քանզի անիկայ իմ մեծ եղբայրս
է , ) անոր՝ ու րԱբիաթար քա-
հանային՝ և Շարուհեան Յովաբին
23 համար ։ Ու Սողոմոն թագա-
ւորը Տէրոջմով երդում ըրաւ ,
ու ըսաւ . ցԱստուած ինծի այս-
պէս՝ ու ասկէ աւելի ընէ , որ
Ադոնիա աս խօսքը իր կենացը
24 դէմ խօսեր է . Եւ հիմա ղիս հաս-
տատօղը , ու զիս իմ հօրս Դաւի-
թին աթոռը նստեցընողը , և ւիր ը-
սածին պէս՝ ինծի տուն շինող Տէ-
րը կենդանի է , որ Ադոնիան այսօր

վ Ել․ ի․ 12 ։

տ Տես Սաղ․ խե․ 9 ։

ր Գլ․ ա․ 7 ։

ց Հռութ․ ա․ 17 ։

ւ Բ Թագ․ է․ 11, 13 ։ Ա Մն․ իբ․ 10 ։

Ն․ Ք․ ՂՔ․
1014

25 պիտի մեռցուի ։ Ու Սողոմոն թա-
գաւորը՝ Յովիադայի որդին Բա-
նեան խրկեց . ու զարկաւ զանիկայ ,
որ մեռաւ ։
26 Եւ թագաւորը Աբիաթար քա-
հանային ըսաւ . փԱնաթովթ՝ քու
ագարակդ գնա . քանզի դուն մեռ-
նելու արժանի ես , բայց այսօր քեզ
չեմ մեռցըներ . քորովհետև իմ հօրս
Դաւիթին առջևը Տէր Եհովային
տապանակը վերցուցիր . օու իմ
հօրս ամէն քաշած նեղութիւննե-
27 րուն մասնակից եղար ։ Ու Սողո-
մոն՝ Աբիաթարը Տէրոջը քահանա-
յութենէն հանեց . որ Սելովի մէջ
Հեղիին տանը համար ֆՏէրոջը ը-
սած խօսքը կատարուի ։

փ Յես․ իա․ 18 ։

ք Ա Թագ․ իգ․ 6 ։ Բ Թագ․ ժե․ 24, 29 ։

օ Ա Թագ․ իբ․ 20, 23 ։ Բ Թագ․ ժե․ 24 ։

ֆ Ա Թագ․ բ․ 31—35 ։

28 Եւ աս լուրը մինչև Յովաբին հա-
սաւ . ( քանզի Յովաբ թէպէտև
Աբիսողոմին հետևող չէր , բայց
աԱդոնիային հետևող եղաւ . ) ու
ան ատենը Յովաբ Տէրոջը խորանը
փախաւ , ու բսեղանին եղջիւրները
29 բռնեց ։ Եւ Սողոմոն թագաւորին
իմացուցին թէ՝ Յովաբ Տէրոջը խո-
րանը փախաւ , և ահա անիկայ սե-
ղանին քովն է . ու Սողոմոն՝ Յո-
վիադայի որդին Բանեան խրկեց ,
ու ըսաւ . Գնա անիկայ զարկ ։
30 Եւ Բանեա Տէրոջը խորանը Յովա-
բին գնաց , ու անոր ըսաւ . Թա-
գաւորը այսպէս կ'ըսէ . Դուրս ե-
լիր . ու անիկայ ըսաւ . Չէ , ես
հոս պիտի մեռնիմ . ու Բանեա՝
թագաւորին պատմեց ու ըսաւ .
Յովաբ այսպէս ըսաւ , ու ինծի
31 այսպէս պատասխան տուաւ ։ Եւ
թագաւորը անոր ըսաւ . գԱնոր ը-
սածին պէս ըրէ , ու զանիկայ մեռ-
ցուր , և զանիկայ թաղէ . դոր իմ
վրայէս , ու իմ հօրս տանը վրայէն
Յովաբին թափած անմեղ արիւնը
32 վերցընես ։ Եւ Տէրը եանոր բռած
արիւնը անոր գլուխը դարձընէ .
որովհետև անիկայ առանց իմ հօրս
Դաւիթին գիտութեանը՝ երկու
իրմէ արդար ու աղէկ մարդիկնե-
րուն , Իսրայէլի սպարապետին՝
զՆերեան Աբեններին , ու Յուդայի
սպարապետին՝ էՅեթերեան Ամե-
սային վրայ յարձակեցաւ , ու զա-
33 նոնք սրով մեռցուց ։ Ուստի անոնց
արիւնը Յովաբին գլուխը ու անոր
ըսերունդին գլուխը դառնայ յա-
ւիտեան . թբայց Դաւիթին՝ ու ա-
նոր սերունդին՝ և անոր տանը՝ ու
անոր աթոռին՝ Տէրոջը կողմանէ
յաւիտեան խաղաղութիւն ըլլայ ։
34 Եւ Յովիադայի որդին Բանեան ե-
լաւ , ու անոր վրայ յարձակեցաւ .
ու զանիկայ մեռցուց . և անիկայ
անապատին մէջ՝ իր տունը թա-
35 ղուեցաւ ։ Ու թագաւորը անոր

ա Գլ․ ա․ 7 ։

բ Գլ․ ա․ 50 ։

գ Ել․ իա․ 14 ։

դ Թուոց․ լե․ 33 ։ Բ Օր․ ժթ․ 13 ։ իա․ 8, 9 ։

ե Դատ․ թ․ 24, 57 ։ Սաղ․ է․ 16 ։

զ Բ Մն․ իա․ 13 ։

է Բ Թագ․ գ․ 27 ։

ը Բ Թագ․ ի․ 10 ։

թ Բ Թագ․ գ․ 29 ։

ժ Առակ․ իե․ 5 ։

Ն․ Ք․ ՃՔ․
1014

է Թու․ ԻԵ․ 11․12․13։ աԹագ․ Բ․ 35․ Տես ա Մն․ Զ․53։ Իզ․ 3։
ւ Հռմ 27։
ե Բ Թագ․ ԺԶ․5։ Հռմ 8։
ժ Բ Թագ․ ԺԵ․ 23։
է Ղև․ Ի․ 9։ Ցես Բ․ 19։ Բ Թագ․ Ա․ 16։

1011

հ Ա Թագ․ ԻԷ․ 2։

տեղը զօրքերուն վրայ՝ Յովիադայի
որդին Բանեան դրաւ․ ու Թագա-
ւորը էՍադովկ քահանան ւԱբիա-
Թարին տեղը դրաւ։
36 Եւ Թագաւորը մարդ խրկեց,
եՍեմէին կանչեց, ու անոր ըսաւ․
Քեզի Երուսաղեմի մէջ տուն մը շի-
նէ, ու հոն նստէ, ու անկէ՝ ասդին
37 կամ անդին չելլես․ Քանզի աղէկ
գիտնաս որ, Թէ որ ելլես, ու
ժԿեդրոն հեղեղատը անցնիս, նոյն
օրը անպատճառ պիտի մեռնիս․
էոււ քու արիւնդ քու գլուխդ պիտի
38 ըլլայ։ Եւ Սեմէի՝ Թագաւորին ը-
սաւ․ Աս խօսքդ բարի է․ իմ Թա-
գաւոր տէրս ինչպէս որ ըսաւ, քու
ծառադ այնպէս պիտի ընէ։ Ուս-
տի Սեմէի շատ օրեր Երուսաղեմի
մէջ նստաւ։
39 Ու իրեք տարիէն ետքը Սեմէիին
երկու ծառաները՝ Գեթի Թագա-
ւորին՝ Մաաքայի որդւոյն հԱնքու-
սին քովը փախան․ ու Սեմէիին ի-
մացուցին՝ ըսելով․ Ահա՛ քու ծա-
40 ռաներդ Գեթի մէջ են։ Եւ Սե-
մէի ելաւ, ու իր իշուն համետը
դրաւ, ու իր ծառաները փնտռե-
լու համար Գէթ գնաց Անքուսին
քովը․ և Սեմէի գնաց՝ ու իր ծա-
41 ռաները Գեթէն բերաւ։ Ու երբ-
որ Սեմէիին Երուսաղեմէն Գէթ
երթալը ու դառնալը Սողոմոնին
42 պատմեցին, Ան ատենը Թագաւո-
րը մարդ խրկեց, ու Սեմէին կան-
չեց, ու անոր ըսաւ․ Չէ՞ որ քե-
զի Տէրոջմով երդում ընել տուի,
և քեզի վկայութիւն րրի ու ըսի
Թէ, Աղէկ գիտնաս որ Երուսա-
ղէմէն ելած ու ասդին կամ անդին
գացած օրդ՝ անպատճառ պիտի
մեռնիս․ ու դուն ինծի՝ Լսած խօս-
43 քըս բարի է՝ ըսիր․ Ուրեմն ինչո՞ւ
համար Տէրոջը երդումին ու քեզի
տուած պատուէրիս հնազանդու-
44 Թիւն չըրիր։ Եւ Թագաւորը Սե-
մէիին ըսաւ․ Դուն իմ հօրս Դա-
ւիԹին դէմ քու ըրած ջբոլոր չա-
րուԹիւնդ գիտես, *որուն քու
սիրտդ ալ կը վկայէ՚․ ուստի Տէրը
ղքու չարուԹիւնդ քու գլուխդ
45 պիտի դարձընէ․ Բայց Սողոմոն
Թագաւորը օրհնեալ, ու ճԴաւի-
Թին աԹոռը Տէրոջը առջևը յա-
ւիտեան հաստատ պիտի ըլլայ։
46 Եւ Թագաւորը Յովիադայի որ-
դւոյն Բանեային հրաման տուաւ․
ու անիկայ ելաւ, ու զարկաւ զա-
նիկայ, որ մեռաւ։ Եւ մԹագա-
ւորուԹիւնը Սողոմոնին ձեռքին
մէջ հաստատուեցաւ։

ջ Բ Թագ․ ԺԶ․ 5։
* Եբր․ որն որ քու սիր-տըդ գիտէ․
ղ Սաղ․ Է․ 16։ Եզեկ․ ԺԷ․ 19։
ճ Առակ․ ԻԵ․ 5։

մ Հռմ 12։ Բ Մն․ Ա․ 1։

ԳԼ․ Գ

1 Սողոմոն՝ Փարաւոնին աղջիկը իրեն կնիկ կ'առնէ։ 2 Բարձր տեղերը զոհ մատուցա-
նելը սովորուԹիւն ըլլալով՝ Սողոմոն Գաբաւոնի մէջ զոհեր կը մատուցանէ։ 5 Սողոմոն Գաբաւոնի մէջ՝ Աստուծոյ առաջարկած բաներէն՝ իմաստուԹիւնը ընտրելուն համար, իմաստուԹիւն՝ հարստուԹիւն ու պատիւ կը ստանայ․ 16 Սողոմոն երկու պոռնիկ կնիկներուն դատաստանը իմաստուԹեամբ կտրելուն համար՝ խիստ անուանի կ'ըլլայ։

Ն․ Ք․ ՃՔ․
1014

1 Եւ ոՍողոմոն՝ Եգիպտոսի Փարա-
ւոն Թագաւորին հետ խնամու-
Թիւն ըրաւ, ու Փարաւոնին աղ-
ջիկը առաւ, ու զանիկայ բԴաւի-
Թին քաղաքը բերաւ, մինչև որ գիր
տունը ու դՏէրոջը տունը, ու եԵ-
րուսաղեմին շրջակայ պարիսպը շի-
2 նեց լմնցուց։ զՍակայն ժողո-
վուրդը բարձր տեղերու վրայ զոհ
կը մատուցանէր․ քանզի մինչև ան
օրերը Տէրոջը անուանը տուն շի-
նուած չէր։
3 Եւ Սողոմոն էՏէրը կը սիրէր,
ըու իր հօրը ԴաւիԹին կանոննե-
րովը կը քալէր․ միայն Թէ բարձր
տեղերու վրայ զոհ կը մատուցա-
4 նէր ու խունկ կը ծխէր։ Եւ
Թ Թագաւորը Գաբաւոն գնաց, որ
հոն զոհ մատուցանէ․ ժքանզի մեծ
բարձր տեղը անիկայ էր․ Սողոմոն
ան սեղանին վրայ հազար ողջակէզ
5 զոհեց։ Ու ոԳաբաւոնի մէջ Տէ-
րը Սողոմոնին երևցաւ ւգիշերուան
երազով․ և Աստուած ըսաւ․ Բան
6 մը խնդրէ, որ քեզի տամ։ խՈւ
Սողոմոն ըսաւ․ Դուն քու ծառա-
յիդ իմ հօրս ԴաւիԹին մեծ ողոր-
մուԹիւն ըրիր, ինչպէս որ անիկայ
ծքու առջևդ ճշմարտուԹեամբ,
արդարուԹեամբ և ուղիղ սրտով
քեզի հետ քալեց, ու անոր՝ աս
մեծ ողորմուԹիւնը պահեցիր, ու
կիր աԹոռը նստող որդի մը տուիր
անոր, ինչպէս որ այսօր կ'երևնայ։
7 Եւ հիմա ո՛վ Տէր Աստուած իմ,
դուն քու ծառադ՝ իմ հօրս Դաւի-
Թին տեղը Թագաւոր ըրիր․
հբայց ես պզտիկ տղայ մըն եմ․
8 ձելլել ու մտնել չեմ գիտեր․ Ու
քու ծառադ քու ղընտրած ժողո-
վուրդիդ մէջն է, որ անիկայ շատ-
ւոր՝ ճանԹիւ ու անհամար ժողո-
9 վուրդ մըն է։ մՈւստի քու ծա-
ռայիդ յիմաստուն սիրտ տուր,
շոր քու ժողովուրդդ դատէ, ու
ոբարին ու չարը որոշէ․ քանզի աս
քու մեծ ժողովուրդդ ո՞վ կրնայ
10 դատել։ Եւ աս խօսքը՝ Տէրոջը
Սողոմոնին աս բանը խնդրելը՝ Տէ-
րոջը աչքերուն հաճոյ երևցաւ։
11 Ու Աստուած անոր ըսաւ․ Որով-
հետև աս բանը խնդրեցիր, ու
ւքեզի շատ օրեր չխնդրեցիր, ու
քեզի հարստուԹիւն չխնդրեցիր,
ու քու Թշնամիներուդ հոգին
չխնդրեցիր, հապա իրաւունքը

ո Գլ․ Է․ 8։ Թ․ 24։
բ Բ Թագ․ Ե․ 7։
գ Գլ․ Է․ 1։
դ Գլ․ Զ։
ե Գլ․ Թ․ 15, 19։
զ Ղև․ ԺԷ․ 3, 4, 5։ Բ Օր․ ԺԲ․ 2, 4, 5։ Գլ․ ԻԲ․ 44։
է Բ Օր․ Զ․ 5։ Լ․ 16, 20։ Սաղ․ ԼԱ․ 23։ Հռով․ Ը․ 28։ ԱԿոր․ Ը․ 3։
ը Հռմ 6, 14։
Թ Բ Մն․ Ա․ 3։
ժ Ա Մն․ ԺԶ․ 39։ Բ Մն․ Ա․ 3։
ի Գլ․ Թ․ 2։ Բ Մն․ Ա․ 7։
լ Թու․ ԺԲ․ 6։ Մատ․ Ա․ 20։ Բ․ 13, 19։
խ Բ Մն․ Ա․ 8, 9։
ծ Գլ․ Բ․ 4։ Թ․ 4։ Դ Թագ․ Ի․ 3։ Սաղ․ ԺԵ․ 2։
կ Գլ․ Ա․ 48։

հ Ա Մն․ ԻԹ․ 1։
ձ Թու․ ԻԷ․ 17։
ղ Բ Օր․ Է․ 6։
ճ Ծն․ ԺԳ․ 16։ ԺԵ․ 5։
մ Բ Մն․ Ա․ 10։ Առակ․ Բ․ 3—9։ Յակ․ Ա․ 5։
յ Եբր․ լսող։
շ Սաղ․ ՀԲ․ 1, 2։
ն Եբր․ Ե․ 14։
շ Յակ․ Դ․ 3։

Ն. Ք. ԳՃ.
1014

* իմանալու իմաստութիւն խնդրե-
12 ցիր . ᵃԱհա՛ քու խօսքիդ պէս
ըրի . Ահա՛ քեզի իմաստուն ու
հանճարեղ սիրտ տուի , այնպէս
որ՝ քեզմէ առաջ քեզի պէս մէկը
եղած չէ , ու քեզմէ ետքն ալ քու
13 նմանդ պիտի չելլէ ։ Նաև ᵇքու
չխնդրածդ ալ քեզի տուի , թէ՛
Հարստութիւն և թէ՛ փառք .
այնպէս որ՝ քու կենացդ բոլոր օրե-
րուն մէջ՝ թագաւորաց մէջ քեզի
14 պէս մէկը չգտնուի ։ Եւ թէ որ
իմ ճամբաներուս մէջը քալես՝ իմ
հրամաններս ու պատուիրանքներս
պահելով , ᵉինչպէս որ քու հայրդ
Դաւիթ քալեց , ան ատենը ᶠքու
15 օրերդ պիտի շատցընեմ ։ Ու Սո-
ղոմոն արթնցաւ , և ահա երազ
էր . ու Երուսաղէմ գնաց , ու Տէ-
րոջը ուխտին տապանակին առջևը
կայնեցաւ , և ողջակէզներ մատուց ,
ու խաղաղութեան զոհեր ըրաւ , ու
ᵍիր բոլոր ծառաներուն կոչունք
ըրաւ ։
16 Ան ատենը երկու պոռնիկ կնիկ-
ներ թագաւորին եկան , ու ᵗանոր
17 առջևը կայնեցան ։ Եւ կնիկներէն
մէկը ըսաւ . Ո՛վ տէր իմ , ողորմէ՛
ինծի . ես ու աս կնիկը մէկ տան մը
մէջ կը բնակինք . ու նոյն տանը
մէջ ասոր քովը տղայ մը ծնայ ։
18 Եւ իմ ծնանելուս երրորդ օրը՝ աս
կնիկն ալ տղայ մը ծնաւ . ու մենք
մէկտեղ էինք . տանը մէջ մեր հե-
տը օտար մարդ չկար . հապա տա-
նը մէջ մենք երկուքնիս միայն էինք ։
19 Եւ աս կնկանը տղան գիշերով մե-
ռաւ . քանզի ասիկայ անոր վրայ
20 պառկեցաւ . Ու կէս գիշերուն ե-
լաւ , և քու աղախինդ քնացած
ատենը՝ իմ տղաս քովէս առաւ ,
ու զանիկայ իր ծոցը պառկեցուց ,
ու իր մեռած տղան իմ ծոցս պառ-
21 կեցուց ։ Ու երբոր առաւօտուն ե-
լայ , որ տղուս ծիծ տամ , ահա ա-
նիկայ մեռած էր . ու առաւօտուն
մտադրութեամբ անոր նայեցայ , և
ահա՛ անիկայ իմ ծնած տղաս չէր ։
22 Իսկ միւս կնիկը ըսաւ . Չէ՛ . հա-
պա ողջ եղողը իմ տղաս է , ու մե-
ռածը քու տղադ է ։ Եւ ասիկայ
ըսաւ . Չէ՛ . հապա մեռածը քու
տղադ է , ու ողջ եղողը իմ տղաս
է . ու թագաւորին առջևը այսպէս
23 կը խօսէին ։ Ան ատենը թագա-
ւորը ըսաւ . Ասիկայ կ'ըսէ՝ Իմ
տղաս աս ողջ եղողն է , ու մեռա-
ծը քու տղադ է . ու անիկայ կ'ը-
սէ՝ Չէ , հապա մեռածը քու տղադ
24 է , ու ողջ եղողը իմ տղաս է . Եւ
թագաւորը ըսաւ . Ինծի մէկ սուր
մը բերէք . ու թագաւորին առջևը
25 սուր մը բերին ։ Եւ թագաւորը
ըսաւ . Ողջ եղող տղան կտրեցէք ,
երկու կտոր ըրէք . ու կէսը մէկուն ,
26 ու կէսն ալ մէկալի՛ն տուէք ։ Ան
ատենը ողջ տղուն մայրը եղող
կնիկը՝ թագաւորին պատասխան
տուաւ , ու իր տղուն վրայ ᵗաղիքը
գալարելուն համար , ասանկ ըսաւ .
Ո՛վ տէր իմ , ողորմէ ինծի . ողջ
տղան անոր տուէք , ու զանիկայ
մի՛ մեռցընէք ։ Բայց միւսը ըսաւ .
Ո՛չ ինծի ըլլայ , ո՛չ քեզի . զանիկայ
27 ճեղքեցէ՛ք ։ Եւ թագաւորը պա-
տասխան տուաւ , ու ըսաւ . Ողջ
տղան աս կնկանը տուէք , ու չըլ-
լայ որ զանիկայ մեռցընէք , քանզի
28 անոր մայրը ասիկայ է ։ Եւ բոլոր
Իսրայէլը թագաւորին կտրած դա-
տաստանը լսելով՝ թագաւորէն
վախցան . քանզի տեսան որ անոր
վրայ ᵃԱստուծոյ իմաստութիւնը
կայ՝ դատաստան ընելու համար ։

## ԳԼ. Դ

1 Սողոմոնին իշխանները . 7 Անոր տասուերկու պաշտօնատարները՝ որոնք իրեն ռոճիկ կու տային ։ 20 ։ 24 Սողոմոնին թագաւորութեանը խաղաղութիւնը ու ընդարձակութիւնը ։ 22 Անոր ամէն օրուան ռոճիկը ։ 26 Անոր ախոռները ։ 29 անոր իմաստութիւնը ։

1 Եւ Սողոմոն թագաւորը բոլոր
Իսրայէլի վրայ թագաւոր էր ։
2 Ու անոր իշխանները ասոնք էին .
Սադովկի որդին Ազարիան քահա-
3 նայ էր . †Սիսային որդիքը Եղիքո-
րէփը ու Աքիան ատենադպիրներ
էին . և ᵃԱքիղուդի որդին Յովսա-
4 փատը յիշատակաց դպիր էր . Ու
ᵇՅովիադայի որդին Բանեան զօր-
քերուն վրայ էր . և Սադովկը ու
5 ᶜԱբիաթարը քահանաներ էին . Ու
ᵈՆաթանի որդին Ազարիան ᵈգոր-
ծակալներուն վրայ էր .
ու Նաթանի որդին Զաբուդը ‡նա-
խարար ու ᵉթագաւորին բարե-
6 կամն էր . Ու Աքիսարը տանը հը-
րամանատարն էր . ու Աբդայի որ-
դին ᶻԱդոնիրամը հարկերուն վրայ
էր ։
7 Եւ Սողոմոն բոլոր Իսրայէլի վրայ
տասուերկու գործակալներ ունէր ,
ու անոնք՝ թագաւորը ու անոր
տունը կը կերակրէին . ու կերակ-
րելը ամէն մէկուն՝ տարին մէկ ամիս
8 կ'իյնար ։ Եւ անոնց անունները
ասոնք են . Եփրեմի լեռան մէջ՝
9 ‖Բենովրը . Մաքասի , Սաղաբինի ,
Բեթսամիւսի , ու Ելօն Բեթանա-
10 նի մէջ՝ §Բենդակարը . Արաբովթի
մէջ՝ *Բենհեսեդը , որուն կը վերա-
բերէր Սոքովը ու բոլոր Ոբերի եր-
11 կիրը . Բոլոր Դովրի գաւառին մէջ՝
††Բենաբինադաբը . Սողոմոնին աղ-
ջիկը Տափաթը՝ ասոր կնիկն էր .
12 Թանաքի ու Մակեդդովի մէջ , ու

* Եբր. լսելու
ա Յոբ. Ե. 14, 15.
բ Գլ. Դ. 29, 30. 31. Ե. 12. Ժ. 24. Ժող. Ա. 16.
գ Մատ. Զ. 33. Եփե. Գ. 20.
դ Գլ. Դ. 21, 24. Ժ. 23, 25. Ը. Առակ. Գ. 16.
ե Գլ. ԺԵ. 5.
զ Սաղ. ՂԱ. 16. Առակ. Գ. 2.
է Ծն. ԽԱ. 7.
ը Ծն. Խ. 20. Գլ. Ը. 65. Եսթ. Ա. 3. Դան. Ե. 1. Մար. Զ. 21.
թ Թուո. ԻԵ. 2.

Ն. Ք. ԳՃ.
1014

ժ Ծն. ԽԳ. 30. Եւ. ԽԹ. 15. Երեմ. ԼԱ. 20. Ովս. ԺԱ. 8.
ա Հմր 9, 11, 12.
† Կամ՝ Սուսայէն. տես Ա Մն. ԺԸ. 16.
ա Բ Թագ. Ը. 16. Ի. 24.
բ Գլ. Բ. 35.
գ Տես Գլ. Բ. 27.
դ Հմր 7.
‡ Եբր. քահանայ. Բ Թագ. Ը. 18. Ի. 26.
ե Բ Թագ. ԺԵ. 37. ԺԶ. 16. Ա Մն. ԻԷ. 33.
զ Գլ. Ե. 14.
‖ Եբ՝ Ովրի որդին.
§ Եբ՝ Դակարի որդին.
* Եբ՝ Հեսեդի որդին.
†† Եբ՝ Աբինադաբի որդին.

Ն · Ք · ԴՔ ·
1014

Ցեզրայելին տակը՝ Սարթանին քո-
վը եղող բոլոր Բեթսանին մէջ՝ ու
Բեթսանէն մինչև Աբէլմաուլա , ու
մինչև Յեկմամին անդիի կողմը , Ա-
13 քիղուդի որդին Բաանան · Ռա-
մովդ գաղաադի մէջ՝ *Բենգաբերը ·
Գաղաադի մէջ եղող Մանասէան
ի Յայիրին գիւղաքաղաքները , ու
Բասանի մէջ եղող ըԱրգոբի նա-
հանգը , վաթսուն մեծ պարսպաւոր
ու պղնձանիգ քաղաքները անոր կը
14 վերաբերէին ։ Մանայիմի մէջ՝ Ադ-
15 դովի որդին Աքինադաբը · Նեփ-
թաղիմի մէջ՝ Աքիմաասը · ասիկայ
ալ Սողոմոնին աղջիկը Բասեմաթը
16 կնիկ առաւ · Ասերի ու Բաաղօթի
մէջ՝ Քուսիի որդին Բաանան ·
17 Իսաքարի մէջ՝ Փարուայի որդին
18 Յովսափատը · Բենիամինի մէջ՝
19 Էլայի որդին Սեմէին · Գաղաադի
երկիրը՝ ու Ամորհացւոց Սեհոն
թագաւորին՝ ու Բասանի Ովգ թա-
գաւորին ՐԵրկիրը՝ Ուրիի որդին
Գաբերը · ու այն երկրին մէջ միայն
մէկ գործակալ մը կար ։
20 Յուդան ու Իսրայէլը շատուորու-
թեան կողմանէ ծծովուն եզերքը
եղող աւազին չափ շատ էին ·
էկ՚ուտէին , կը խմէին , ու ուրախու-
21 թիւն կ՚ընէին ։ Եւ Սողոմոն Եփ-
րատ գետէն մինչև Փղշտացւոց եր-
կիրը , ու մինչև Եգիպտոսի սահմա-
նը , ի բոլոր թագաւորութիւննե-
րուն վրայ կ՚իշխէր · և անոր ընծ-
ծաներ կը բերէին , ու Սողոմոնին
ծառայութիւն կ՚ընէին՝ անոր կե-
նացը բոլոր օրերուն մէջ ։
22 Եւ Սողոմոնին մէկ օրուան ռոճի-
կը ա էր · երսուն քոռ նաշիհ , ու
23 վաթսուն քոռ ալիւր , Տասը գեր
արջառ , ու քսան արօտական ար-
ջառ , ու հարիւր ոչխար · բաց
՚ի եղջերուներէն , այծեամներէն ,
†վիթերէն ու գիրցուցած թռչուն-
24 ներէն ։ Քանզի անիկայ Գետին
բոլոր ասդիի կողմին՝ Թափսայէն
մինչև Գազա՝ Գետին ասդիի կողմը
եղող ի բոլոր թագաւորներուն վրայ
կ՚իշխէր · ու ^ իր բոլորտիքը եղող-
ներուն հետ խաղաղութիւն ունէր ։
25 Եւ Սողոմոնին բոլոր օրերուն մէջ՝
Յուդան ու Իսրայէլը՝ ) Դանէն մին-
չև Բերսաբէէ , ամէն մէկը մարդ
իր որթին տակը ու իր թզենիին
տակը ապահովութեամբ ՚կը նըս-
տէր ։
26 Եւ Սողոմոն իր ՚կառքի ձիերուն
համար՝ քառասուն հազար ախոռ
ունէր , ու տասնուերկու հազար
27 ձիաւոր ։ Եւ ^ այն գործակալները՝
ամէն մէկը իր ամսուն մէջ՝ Սողոմոն
թագաւորը , ու Սողոմոն թա-
գաւորին սեղանը բոլոր մօտեցող-

ՙ Յի՛ Գաբե-
րի որդին ։
ի Թուոց · լբ ·
41 ։
ը Բ Օր · Գ ·
4 ։
Ի Բ Օր · Գ ·
Տ ։
Ժ Ծն · ԻԲ ·
17 ։ ԳԼ · Գ ·
Տ ։ Առակ ·
ԺԴ · 28 ։
Լ Սաղ · ՀԲ ·
3 , 7 ։ Միք ·
Գ · 4 ։
Լ Ծն · ԺԵ ·
18 ։ Յես ·
Ա · 4 ։
Ի Բ Մն · Թ ·
26 ։ Սաղ ·
ՀԲ · Տ ։
Ծ Սաղ · ԿԲ ·
29 ։ ՀԲ · 10 ,
11 ։
† Կամ՝ գո-
մէշներէն
Կ Սաղ · ՀԲ ·
11 ։
Հ Ա Մն · ԻԲ ·
9 ։
Ձ Դատ · Ի ·
1 ։
Ղ Միք · Դ ·
4 ։ Զաք ·
Գ · 10 ։
Ճ Տե · Երեմ ·
ԻԴ · 6 ։
Մ Տե · Բ Օր ·
ԺԷ · 16 ։
Յ ԳԼ · Ժ · 26 ։
Բ Մն · Ա ·
14 ։ Թ · 25 ։
Ն Հմր 7 ։

ները կը կերակրէին՝ մէկ բան մը
28 պակաս չընելով · Նաև ձիերուն ու
ւերիվարներուն համար՝ անոնց ե-
ղած տեղը՝ ամէն մէկը իր վրայ
դրուած հարկին չափովը գարի ու
յարդ կը բերէին ։
29 Եւ ՙԱստուած Սողոմոնին իմաս-
տութիւն ու խիստ շատ հանճար ,
և սրտի լայնութիւն տուաւ , ծո-
վուն եզերքը եղող աւազին չափ ։
30 Ու Սողոմոնին իմաստութիւնը՝ բո-
լոր ւարևելցիներուն իմաստութե-
նէն , ու ՙԵգիպտացւոց բոլոր ի-
31 մաստութենէն աւելի էր ։ Եւ
անիկայ ՙամէն մարդոցմէ իմաս-
տուն էր · Եզրահացի ՙԵթանէն ,
ու Մաւուլի որդւոցմէն ՙԵմանէն ,
Քաղքօլէն ու Դարդայէն իմաստուն
էր · ու բոլոր շրջակայ ազգերուն
32 մէջ անուանի եղաւ ։ Եւ ՙանիկայ
երեք հազար առակ խօսեցաւ , ու
ՙանոր շարադրած երգերը հազար
33 ու հինգ էին ։ Եւ անիկայ ծառե-
րուն վրայ խօսեցաւ , Լիբանանի
եղևինէն՝ մինչև պատի վրայ բուս-
նող զոպան · ու նաև անասնոց
վրայ , թռչուններու վրայ , սո-
ղուններու վրայ , ու ձուկերու
34 վրայ խօսեցաւ ։ Եւ ՙամէն ժողո-
վուրդներէն , ու անոր իմաստու-
թեանը համբաւը լսող երկրիս բոլոր
թագաւորներէն՝ Սողոմոնին իմաս-
տութիւնը մտիկ ընելու կու գա-
յին ։

ԳԼ · Ե

1 Քիրամ շնորհաւորութեան համար՝ պատգա-
մաւորներ խրկելով Սողոմոնին · կ՚իմանայ որ
անիկայ Տէրոջը տաճար շինելու է · 6 և Սողո-
մոն կը խնդրէ որ այս շինութեանս հարկաւոր
եղած փայտերը՝ Քիրամը հոգայ ։ 7 Քիրամ
զԱստուած կը փառաւորէ Սողոմոնին համար ,
և անկէ իր ընտանեացը համար կերակուր
խնդրելով , ինքն ալ անոր փայտեր կը խրկէ ։
13 Սողոմոնին գործաւորներուն ու բանուոր-
ներուն թիւը ։

1 Եւ ՙՏիւրոսի Քիրամ թագաւորը
իր ծառաները Սողոմոնին խըր-
կեց · քանզի լսեր էր որ անոր հօրը
տեղը զանիկայ թագաւոր օծեր են ·
ՙ Քանզի Քիրամ միշտ Դաւիթը
2 կը սիրէր ։ ՙՍողոմոն ալ Քիրամին
3 մարդ խրկեց , ու ըսաւ · Դուն գի-
տես որ իմ հայրս Դաւիթ չկրցաւ
իր Տէր Աստուծոյն անուանը տուն
շինել , ՙայն պատերազմներուն
պատճառաւ՝ որոնք անոր բոլորտի-
քը պատեր էին , մինչև որ Տէրը զա-
նոնք անոր ոտքին թաթերուն տա-
4 կը դրաւ ։ Բայց հիմա իմ Տէր Աս-
տուածս ՙամէն կողմանէ ինծի հան-
գստութիւն տուաւ · թշնամի չկայ ,
ու ձախորդ պատահար մը չկայ ։
5 ՙԵւ ահա ես կ՚ըսեմ որ իմ Տէր Աս-
տուծոյս անուանը տուն մը շինեմ ,

Ն · Ք · ԴՔ ·
1014

Լ Եսթ · Ը ·
14 ։ Միք ·
Ա · 13 ։
Ա ԳԼ · Գ · 12 ։
Լ Ծն · ԻԵ · 6 ։
Ղ Տես Գործ ·
Է · 22 ։
Ջ ԳԼ · Գ · 12 ։
Ա Մն · ԺԵ ·
19 ։ Սաղ ·
ՁԹ · ԻՆ վեր-
նագիրը ։
Տես Ա Մն ·
Բ · 6 ։ Գ ·
33 ։ ԺԵ ·
19 ։ Սաղ ·
ՁԸ · ԻՆ վեր-
նագիրը ։
Լ Առակ · Ա ·
1 ։ Ժող ·
ԺԲ · 9 ։
Ե Երգ · Ա ·
1 ։
Ր ԳԼ · Ժ · 1 ։
Բ Մն · Թ ·
1 , 23 ։

Հմր 10 ։
18 ։ Բ Մն ·
Բ · 3 ։
Բ Թագ · Ե ·
11 ։ Բ Մն ·
ԺԴ · 1 ։ Ա-
մով · Ա · 9 ։
Բ Մն · Բ ·
3 ։
Ա Մն · ԻԲ ·
8 ։ ԻԸ · 3 ։
Ի ԳԼ · Դ · 24 ։
Ա Մն · ԻԲ ·
9 ։
Բ Մն · Բ · 4 ։

Ն. Ք. ԳՔ.
1014

ե Բ Թագ. է. 13. ա Մն. ժէ. 12, իբ. 10։
ը Բ Մն. բ. 8, 10։
ր Բ Մն. բ. 16։
ծ Տես Եզր. գ. 7. Եզեկ. իէ. 17. Գոր. ժբ. 20։
է Տես Բ Մն. բ. 10։
* Եբր. քսան քոռ ծեծուած եղ
ւ Գւ. գ. 12։
† Կամ՝ մարդահարկ
խ Գւ. դ. 6։
ծ Գլ. թ. 21. Բ Մն. բ. 17, 18։
կ Ա Մն. իբ. 2։
հ Եզեկ. իէ. 9։

ե ինչպէս որ Տէրը իմ հօրս Դաւի-
թին հետ խօսեցաւ՝ ըսելով. Քու
որդիդ՝ որ քու տեղդ քու աթոռիդ
վրայ պիտի նստեցնեմ, անիկայ
6 իմ անուանս տուն պիտի շինէ։ Ու
հիմա հրաման ըրէ, որ ինծի համար
ը Լիբանանէն եղեւիններ կտրեն. ու
իմ ծառաներս քու ծառաներուդ
հետ ըլլան. և քու ծառաներուդ
վարձքը քու ամէն ըսածիդ պէս՝
քեզի կու տամ. քանզի դուն գի-
տես որ՝ մեր մէջը Սիդոնացւոց պէս
փայտ կտրող վարպետ մարդ չկայ։
7 Ու երբոր Քիրամ՝ Սողոմոնին
խօսքերը լսեց, *շատ ուրախացաւ,
ու ըսաւ. Աս մեծ ժողովուրդին
վրայ Դաւիթին իմաստուն որդի
տուող Տէրը այսօր օրհնեալ ըլլայ։
8 Եւ Քիրամ՝ Սողոմոնին մարդ խըր-
կեց՝ ըսելով. Ինծի խրկած խօսքդ
լսեցի. ես եղեւնափայտի ու մայր
փայտի համար քու ամէն կամքդ
9 պիտի կատարեմ։ Իմ ծառաներս
Լիբանանէն ծովը իջեցընեն. ր Ու
ես զանոնք լաստեր շինելով, մինչև
ինծի ցուցուցած տեղդ՝ ծովէն տա-
նիմ, և հոն զանոնք քակեմ, ու
դուն վերցընես. դուն ալ ծ իմ
տանս պաշար տալով՝ իմ կամքս
10 կատարես։ Եւ Քիրամ՝ Սողոմոնին
ուզածին չափ եղեւնափայտ ու մայր
11 փայտ կու տար։ է Ու Սողոմոն՝ Քի-
րամին տանը համար քսան հազար
քոռ ցորեն, ու * երկու հարիւր
մար մաքուր եղ՝՝ պաշար կու տար։
Սողոմոնը Քիրամին՝ տարուէ տարի
12 ասանկ կու տար։ Եւ Տէրը Սողո-
մոնին իմաստութիւն տուաւ,
ւ ինչպէս որ անոր խոստացեր էր.
ու Քիրամին ու Սողոմոնին մէջտեղը
խաղաղութիւն կար. ու երկուքնին
դաշնակցութիւն ըրին։
13 Եւ Սողոմոն թագաւորը բոլոր
Իսրայէլէն † մարդ ժողվեց. ու ժող-
վածը երսուն հազար մարդ եղաւ։
14 Եւ զանոնք յաջորդաբար՝ ամիսը
տասնական հազար հոգի Լիբանան
կը խրկէր, որոնք մէկ ամիս Լիբա-
նանը կը կենային, ու երկու ամիս
իրենց տունը. ու խ Ադոնիրամ ալ
15 մարդահարկին վրայ էր։ ծ Եւ Սո-
ղոմոն եօթանասուն հազար բեռ-
նակիր, ու լեռը ութսուն հազար
16 փայտ կտրող ունէր, Բաց 'ի Սո-
ղոմոնին իրեք հազար իրեք հարիւր
գլխաւոր գործակալներէն՝ որոնք
գործը բանող ժողովուրդին վրայ
17 կ'իշխէին։ Եւ թագաւորը հրա-
մայեց որ մեծ ու պատուական քա-
րեր կտրեն, որ տանը հիմը կ տա-
18 շուած քարերով դնեն։ Ու Սողո-
մոնին վարպետները, ու Քիրամին
վարպետները, և հ Գեբաղացիք՝
փայտերը ու քարերը տաշեցին ու
պատրաստեցին՝ տանը շինութեանը
համար։

Ն. Ք. ԳՔ.
1014

ԳԼ. Զ

1 Սողոմոնի տաճարին շինութիւնը. 5 անոր սենեակները։ 11 Աստուծոյ խոստմունքը անոր վրայով։ 15 Տաճարին ձեղունը ու զարդերը. 23 քերովբէները. 31 դռները. 36 գաւիթը։ 37 Տաճարին շինութեանը ժամանակը։

1 Եւ Իսրայէլի որդւոցը Եգիպտոսի 1012
երկրէն ելլելուն չորս հարիւր
ութսուներորդ տարին, ա Սողո-
մոնին Իսրայէլի վրայ թագաւորե-
լուն չորրորդ տարին, Զիւ ամ-
սուն՝ այսինքն երկրորդ ամսուն
մէջ բ Տէրոջը տունը ‡ շինելու
սկսաւ՝՝։
2 Եւ Սողոմոն թագաւորին Տէրոջը
համար շինած գ տանը երկայնու-
թիւնը վաթսուն կանգուն, լայնու-
թիւնը քսան, ու բարձրութիւնը
3 երսուն կանգուն էր։ Եւ Տանը տա-
ճարին առջևի սրահը քսան կան-
գուն երկայնութիւն ունէր, որ տա-
նը լայնութեանը չափ էր. ու անոր
լայնութիւնը տանը առջևէն՝ տասը
4 կանգուն էր։ Եւ տանը ‖ վանդա-
5 կապատ պատուհաններ շինեց։ Ու
տանը պատին բոլորտիքը՝ տանը պա-
տին կցուած † դստիկոններ շինեց,
թէ տաճարին ե և թէ դաբիրին բո-
լորտիքը. և այսպէս շուրջանակի
6 սենեակներ շինեց։ Վարի կարգին
լայնութիւնը հինգ կանգուն, ու
միջին կարգին լայնութիւնը վեց
կանգուն, ու երրորդին լայնութիւ-
նը եօթը կանգուն էր. քանզի
դուրսէն տանը բոլորտիքը միջոցներ
ձգեց գերաններու հեծցընելու համար,
7 որ տանը պատին մէջը չմտնեն։ Ու
երբոր զ տունը կը շինուէր, քարա-
հանքին մէջ պատրաստուած քարե-
րով կը շինուէր. այնպէս որ անոր
շինուած ատենը՝ մուրճի, կամ տա-
պարի, և կամ ուրիշ երկաթէ գոր-
ծիքի մը ձայն չլսուեցաւ տանը մէջ։
8 Միջին կարգին դուռը՝ տանը § աջ
կողմն էր. ու շրջանակաւոր սան-
դուխներով միջին կարգը, ու մի-
ջին կարգէն երրորդ կարգը կ'ելլէին։
9 է Եւ տունը շինեց, ու զանիկայ լմըն-
ցուց. ու տանը ձեղունը եղեւնա- 1005
փայտի տախտակներով դրուագա-
10 զարդ շինեց։ Եւ բոլոր տանը վրայ
* սենեակներուն կարգը՝՝ հինգ կան-
գուն բարձրութեամբ շինեց. ու ե-
ղեւնափայտերով տանը կցուած էր։
11 Եւ Տէրոջը խօսքը Սողոմոնին ե-
12 ղաւ՝ ըսելով. Հիմա որ դուն աս
տունը կը շինես, ը թէ որ իմ կա-
նոններովս քալես, ու իմ դատաս-
տաններս 'ի գործ դնես, և իմ բո-
լոր պատուիրանքներս պահես՝ ա-

ա Բ Մն. գ. 1, 2։
բ Գոր. է. 47։
‡ Եբր. կը շինէր։
գ Տես Եզեկ. խա. 1, ...։
‖ Կամ՝ ներսէն լայն դուրսէն նեղ. տես Եզեկ. խ. 16։ խա. 16։
† Տես Եզեկ. խա. 6։
ե Հմր 16, 19, 20, 21, 31։
զ Տես Բ Օր. իէ. 5, 6։ Գլ. ե. 18։
§ Եբր՝ հարաւային։
է Հմր 14, 38։
* Կամ՝ շրջանակը
ը Գւ. բ. 4։ թ. 4։

Ն. Ք. ԳՔ. 1005

ᵇ Բ Թագ. Է. 13 ։ Ա Մն. ԻԲ. 10 ։ ᶜ Ել. ԻԵ. 8 ։ Ղև. ԻԶ. 11 ։ Բ Կոր. Զ. 16 ։ Յայտ. ԻԱ. 3 ։ ᵈ Բ Օր. ԼԱ. 6 ։ ᵉ Հմր 38 ։ ᶠ Հմր 16 ։

նոնց մէջը քալելով, ան ատենը քու
վրադ պիտի հաստատեմ ան խօսքը՝
ᵇ որ քու հօրդ Դաւիթին խօսեր
13 եմ. Ու ᶜ Իսրայէլի որդւոցը մէջ
պիտի բնակիմ, ու իմ ժողովուրդս
Իսրայէլը ᵈ պիտի չթողում ։
14 ᵉ Եւ Սողոմոն տունը շինեց, ու
15 զանիկայ լմնցուց ։ Ու տանը պա-
տերը անոր ներսի դիէն՝ Եյատակէն
մինչև պատերուն վերի ծայրը, եղև-
նափայտի տախտակներով շինեց.
տայեղւոյն ներսի դին փայտով ծած-
կեց. ու տանը յատակը մայր փայ-
16 տի տախտակներով պատեց ։ Եւ
տանը ետևի կողմէն քսան կանգու-
նը՝ յատակէն մինչև պատին ծայրը,
եղևնափայտի տախտակներով շի-
նեց. ու ան ներսի միջոցը դաբիրին՝
տայսինքն ᶠ սրբութեանց սրբութիւ-

ᶠ Ել. ԻԶ. 33 ։ Ղև. ԺԶ. 2 ։ Գլ. Ը. 6 ։ Բ Մն. Գ. 8 ։ Եզեկ. ԽԱ. 3 ։ Եբր. Թ. 3 ։

17 նին համար շինեց ։ Բայց տունը՝
այսինքն առջևի տաճարը քառսուն
18 կանգուն էր ։ Եւ տանը մէջ եղող
եղևնափայտերուն վրայ՝ գնդակներ
ու բացուած ծաղիկներ փորագ-
րուած էր. ու ամէնը եղևնափայտէ
ըլլալով, ամենևին քար մը չէր ե-
19 րևնար ։ Եւ դաբիրը ներքին տանը
մէջ պատրաստեց, որ հոն Տէրոջը
20 ուխտին տապանակը դնէ ։ Ու
դաբիրին երեսը քսան կանգուն եր-
կայն էր, և անոր լայնութիւնը
քսան կանգուն, ու բարձրութիւնը
քսան կանգուն էր. և զանիկայ
մաքուր ոսկիով պատեց. եղևնա-
21 փայտէ սեղանն ալ պատեց ։ Ուստի
Սողոմոն տանը ներսի կողմը մաքուր
ոսկիով պատեց. ու դաբիրին առ-
ջևը՝ ոսկի շղթաներով մէկ վարագոյր
մը անցուց, և զանիկայ ոսկիով
22 պատեց ։ Ու բոլոր տունը ոսկիով
պատեց առանց տեղ մը ձգելու. և
դաբիրին քովի ᵍ բոլոր սեղանն ալ
ոսկիով պատեց ։

ᵍ Ել. Լ. 1, 3, 6 ։ * Կամ՝ վայրենի ձիթենիէ, Եբր. իւղալի փայտէ ʰ Ել. ԼԷ. 7, 8, 9 ։ Բ Մն. Գ. 10, 11, 12 ։

23 Եւ Դաբիրին մէջը՝ *նոճիէ ʰ եր-
կու քերովբէներ շինեց. ու անոնց
երկայնութիւնը տասը կանգուն էր ։
24 Եւ քերովբէին մէկ թևը հինգ կան-
գուն, ու քերովբէին միւս թևը
հինգ կանգուն էր. մէկ թևին ծայ-
րէն մինչև միւս թևին ծայրը տասը
25 կանգուն էր ։ Ու միւս քերով-
բէինն ալ՝ տասը կանգուն էր. եր-
կու քերովբէներուն չափը ու ձևը
26 մէկ էր ։ Մէկ քերովբէին բարձ-
րութիւնը տասը կանգուն էր, ու
միւս քերովբէինն ալ նոյնչափ էր ։
27 Ու քերովբէները ներքին տանը մէջ
դրաւ. ու ⁱ քերովբէները իրենց
թևերը կ՚երկընցընէին. մէկուն
թևը մէկ պատին կը դպչէր, ու
միւս քերովբէին թևը միւս պա-
տին կը դպչէր. և անոնց միւս
թևերը տանը մէջտեղը թև թևի կը

ⁱ Ել. ԻԵ. 20 ։ ԼԷ. 9 ։ Բ Մն. Ե. 8 ։

28 դպչէին ։ Ու քերովբէները ոսկիով
պատեց ։
29 Եւ տանը բոլոր պատերուն վրայ՝
քերովբէներ, արմաւենիներ ու բա-
ցուած ծաղիկներ քանդակաձև փո-
րագրեց, թէ ներսի կողմը և թէ
30 դուրսի կողմը ։ Ու տանը ներսի
ու դուրսի յատակը ոսկիով պա-
տեց ։
31 Եւ դաբիրին դրանը նոճիէ փեղ-
կեր շինեց, սեմերը դրանդիքներով
մէկտեղ պատին հինգերորդ մասն
32 էին ։ Ու նոճիէ շինուած երկու
փեղկերուն վրայ՝ քերովբէներ, ար-
մաւենիներ ու բացուած ծաղիկներ
փորագրեց, և զանոնք ոսկիով պա-
տեց, քերովբէներուն ու արմաւե-
նիներուն վրայ ալ ոսկին տարա-
ծելով ։
33 Նոյնպէս ալ տաճարին դրանը
ըրաւ. նոճիէ դրանդիքներ շինեց,
34 սեմերը պատին չորրորդ մասն էին ։ Ու
դրանը երկու փեղկերը մայր փայտէ
էին. մէկ ʲ փեղկը երկու կտորէ ըլ-
լալով՝ կը ծալլուէր, ու միւս
փեղկը երկու կտորէ ըլլալով՝ կը
35 ծալլուէր ։ Եւ անոնց վրայ քերով-
բէներ, արմաւենիներ ու բացուած
ծաղիկներ փորագրեց. և դրուագ-
ներուն վրայ յարմարցուած ոս-
կիով պատեց ։

ʲ Եզեկ. ԽԱ. 23, 24, 25 ։

36 Ու ներքին գաւիթը իրեք կարգ
տաշուած քարերով, ու մէկ կարգ
եղևնափայտի †հեծաններով շի-
նեց ։
37 ᵏ Տէրոջը տանը հիմը՝ չորրորդ
տարին Զիու ամսուն մէջ դրուե-
38 ցաւ. Ու մետասաներորդ տարին
Բուլ ամսուն՝ այսինքն ութերորդ
ամսուն մէջ՝ տունը իրեն վերաբե-
րեալ ամէն բաներովը լմնցաւ ։
Այսպէս ˡ եօթը տարուան մէջ շի-
նեց անիկայ ։

† Կամ՝ տաշուած կոճղերով ᵏ Հմր 1 ։ ˡ Բաղդատէ՝ Հմր 1 ։

## ԳԼ. Է

1 Սողոմոնին տանը, 2 Լիբանանի անտառին տանը, 6 սիւներուն սրահին, 7 դատաստանի սրահին, 8 ու փարաւոնի աղջիկին տանը շինութիւնը ։ 13 Երկու սիւները, 23 ձուլածոյ ծովը, 27 տասը մեքենովթները, 38 տասը աւազանները ։ 40 և բոլոր կարասիները՝ որոնք Քիրամ շինեց ։

1005 էն մինչև 992

ᵃ Տես Գլ. Թ. 10 ։ Բ Մն. Ը. 1 ։

1 Եւ Սողոմոն իր տունը ᵃ տասուի-
րեք տարուան մէջ շինեց. ու
զանիկայ լմնցուց իր բոլոր տունը ։
2 Եւ Լիբանանի անտառին տունն
ալ շինեց. երկայնութիւնը հարիւր
կանգուն, ու լայնութիւնը յիսուն
կանգուն, ու բարձրութիւնը եր-
սուն կանգուն. չորս կարգ եղևնա-
փայտէ սիւներու վրայ շինեց, ու
սիւներուն վրայ եղևնափայտէ հե-
3 ծաններ դրաւ. Ու նաև եղևնա-
փայտէ յարկ մը շինեց ան գերան-

Ն. Ք. ԴՌ. 1005

ներուն վրայ . որոնք քառասունու-
հրնգ սիւներու վրայ էին . ու անոնց
4 կարգը տասնուհինգ էր ։ Եւ իրեք
կարգ իրարու դիմացէ դիմաց շա-
րուած վանդակաւոր պատուհան-
5 ներ կային ։ Ու բոլոր դռները ու
դրանդիքները քառակուսի էին . և
վանդակաւոր պատուհանները իրա-
րու դիմացէ դիմաց իրեք կարգ է-
ին ։
6 Եւ սիւներուն սրահը շինեց . եր-
կայնութիւնը յիսուն կանգուն , ու
լայնութիւնը երեսուն կանգուն . ու
անոնց առջեւը սրահ մը՝ ու անոնց
առջեւը սիւներ ու * սանդուխ մը
7 կար ։ Նաև աթոռին սրահը շինեց ,
ուր որ դատաստան կ'ընէր . ու ա-
նիկայ ատեանի սրահ կ'ըսուէր . ու
անիկայ յատակէն մինչև † ձեղունը
եղևնափայտով ծածկուած էր ։
8 Եւ իր նստած տանը առջեւը սա
գործին պէս ուրիշ գաւիթ մը
կար , տանը ու սրահին մէջտեղը .
ու Փարաւոնին աղջկանը համար՝
‡ որն որ Սողոմոն իրեն կին առեր
էր , աս սրահին պէս տուն մը շի-
9 նեց ։ Ասոնց ամէնը՝ ներսէն ու
դուրսէն , և հիմէն մինչև առաս-
տաղը , ու դուրսի կողմէն մինչև
մեծ գաւիթը , տաշուած քարերու
չափով՝ սղոցած ազնիւ քարերով
10 շինուած էր ։ Հիմն ալ թանկագին
քարերէ էր . մեծ քարերէ՝ տասը
կանգուն քարերէ , ու ութը կան-
11 գուն քարերէ էր ։ Ու վերը տա-
շուած քարերուն չափովը՝ ազնիւ
12 քար ու եղևնափայտ էր ։ Եւ մեծ
գաւիթին չորս կողմը՝ ու Տէրոջը
տանը ներքին գաւիթը և տանը
§ սրահը՝ իրեք կարգ տաշուած քա-
րերով ու մէկ կարգ եղևնափայտի
հեծաններով շինուած էր ։
13 Եւ Սողոմոն թագաւորը մարդ
խրկեց , ու Տիւրոսէն ‖ Քիրամը
14 բերել տուաւ . ¶ Անիկայ Նեփթա-
ղիմի ցեղէն որբևարի կնկան մը որ-
դի էր , ու անոր հայրը Տիւրացի
պղնձագործ մըն էր . և * աս մարդը՝
պղնձէ ամէն տեսակ գործքերը գոր-
ծելու մեծ հմտութիւն , իմաստու-
թիւն ու գիտութիւն ունէր . և
Սողոմոն թագաւորին եկաւ , ու
անոր ամէն գործքը կատարեց ։
15 Եւ անիկայ՝ † պղնձէ երկու սիւն
ձուլեց . մէկ սիւնին երկայնութիւ-
նը տասնըութը կանգուն , ու շրր-
ջապատը տասուերկու կանգուն
էր . այսպէս էր երկրորդ սիւնին ալ ։
16 Եւ սիւներուն գլուխը դնելու հա-
մար՝ պղնձէ երկու խոյակ ձու-
լեց . մէկ խոյակին բարձրութիւ-
նը հինգ կանգուն , ու մէկալ խո-
յակին բարձրութիւնը հինգ կան-
17 գուն էր ։ Եւ սիւներուն գլուխը
եղող խոյակներուն համար՝ մէկ
խոյակին համար եօթը՝ ու մէկալ
խոյակին համար եօթը ցանցակերպ
ու շղթայագործ հիւսուած զար-
18 դեր շինեց ։ Այսպէս սիւները շի-
նեց . ու մէկ ցանցակերպ զարդին
վրայ շուրջանակի երկու կարգ
նռներ շարեց , որ սիւնին գլուխը
եղած խոյակը նռներով ծած-
կուի . մէկալ խոյակին ալ այն-
19 պէս ըրաւ ։ Եւ սրահին մէջի սիւ-
ներուն գլուխը եղող խոյակները
չորս կանգուն էին՝ շուշանաձև շի-
20 նուածքով ։ Ու երկու սիւներուն
վրայի խոյակներուն , ու ցանցա-
կերպ զարդին մօտ եղող փորին
վրայէն ալ նռներ կար . ու ‡ երկու
խոյակներուն" վրայ ¶ կարգով շա-
րուած երկու հարիւր նուռ կար ։
21 * Եւ սիւները † տաճարին սրահին
մէջը կանգնեց . ու աջ կողմի սիւնը
կանգնելով , անոր անունը ‖ Յաքին
կոչեց , ու ձախ կողմի սիւնը կանգ-
նելով , անոր անունը § Բոոզ կո-
22 չեց ։ Եւ սիւներուն գլխուն վրայ
շուշանաձև գործ կար . այսպէս
սիւներուն գործը լմնցաւ ։
23 Եւ ¶ ծովը ձուլածոյ շինեց . ու մէկ
շրթունքէն մինչև մէկալ շրթունքը
տասը կանգուն էր , ու բոլորաձև
էր . և անոր բարձրութիւնը հինգ
կանգուն , ու անոր շրջապատը եր-
24 սուն կանգուն էր ։ Ու անոր շըր-
թունքին տակը շուրջանակի ամէն
կողմէն գնդակներ շարուած էին .
* ծովուն բոլորտիքը մէկ կանգունի
մէջ՝ տասնական գնդակներ կար . ու
գնդակները երկու կարգ էին , ո-
րոնք ծովը ձուլած ատեննին ձուլեր
25 էին ։ Անիկայ * տասուերկու եզնե-
րու վրայ կը կենար . որոնց իրեքը
դէպ 'ի հիւսիս . իրեքը դէպ 'ի
արևմուտք . իրեքը դէպ 'ի հարաւ ,
ու իրեքը դէպ 'ի արևելք կը նա-
յէին , ու ծովը անոնց վրայ էր . և
ամենուն ետևի կողմը դէպ 'ի ներս
26 դարձած էր ։ Ու անոր թանձրու-
թիւնը չորս մատնաչափ էր , և շրր-
թունքը գաւաթի շրթունքի պէս
էր , ու կոնը շուշանի ծաղիկներ շի-
նուած էր . ‡ երկու հազար մար
կ'առնէր ։
27 Եւ պղնձէ տասը * մեքենովթ շի-
նեց . ամէն մէկ մեքենովթին երկայ-
նութիւնը չորս կանգուն , ու լայ-
նութիւնը չորս կանգուն , և բարձ-
28 րութիւնը իրեք կանգուն էր ։ Ու
մեքենովթները այսպէս շինուած
էին , անոնք սպառուածներ ունէին ,
և սպառուածները եզերքներուն
29 մէջտեղն էր ։ Ու եզերքներուն
մէջտեղը եղող սպառուածներուն

* կամ՝ վայրագաւիթ
† Եբր. յատակը
‡ Գլ. Գ. 1. Բ Մն. Ը. 11.
§ Յօհ. Ժ. 23. Գործ. Գ. 11.
‖ Բ Մն. Դ. 11. Տես համր 40.
¶ Բ Մն. Բ. 14.
* Բ Մն. Դ. 16.
† Ել. լա. 3. լզ. 1.
Դ Թագ. ԻԵ. 17. Բ Մն. Գ. 15. Դ. 12. Երեմ. ԾԲ. 21.

Ն. Ք. ԴՌ. 1005

‡ կամ՝ երկրորդ խոյակին
¶ Տես Բ Մն. Գ. 16. Դ. 13. Երեմ. ԾԲ. 23.
* Բ Մն. Գ. 17.
† Գլ. Զ. 3.
‖ Եբ՝ պիտի հաստատէ.
§ Եբ՝ անոր մէջը զօրութիւն.
¶ Դ Թագ. ԻԵ. 13. Բ Մն. Դ. 2. Երեմ. ԾԲ. 17.
* Բ Մն. Դ. 3.
* Բ Մն. Դ. 4, 5. Երեմ. ԾԲ. 20.
‡ Տես Բ Մն. Դ. 5.
* Եբ՝ խարիսխ, կամ՝ խարսխաձև պատուանդան

Ն. Ք. ՂՔ.
1005

* կամ՝ նոյն. պէս

վրայ՝ առիւծներ, եզներ ու քերովբէներ կար. ու եզերքներուն վրայ՝
վերի կողմը *խարիսխին էր. ու առիւծներուն ու եզներուն տակը
30 կախուած զարդեր կար։ Եւ ամէն
մէկ մեքենովթը պղնձէ չորս անիւ ու պղնձէ առանցքներ ունէր, ու
չորս ոտքերը ուսեր էին անոնց. ու ամէն կախուած զարդին քովը աւազանին տակը ձուլածոյ ուսեր
31 կար։ Եւ անոր բերանը խոյակին
մէջէն դէպ 'ի վեր՝ մէկ կանգուն էր. ու անոր բերանը խարիսխի գործքի պէս բոլորաձև էր, ու մէկ ու կէս կանգուն էր. և բերնին վրայ ալ քանդակներ ու սպառուածներ կային, քառակուսի և
32 ոչ բոլորաձև։ Ու սպառուածնե-
րուն տակը չորս անիւ կար. և անիւներուն առանցքները մեքենովթին վրայ հաստատուած էր, ու ամէն մէկ անիւին բարձրութիւնը մէկ ու
33 կէս կանգուն էր։ Եւ անիւներուն
շինուածքը կառքի անիւներուն շինուածքին պէս էր. ու անոնց առանցքները, շրջանակները, շառաւիղները ու գունտերը՝ բոլորը
34 ձուլածոյ էին։ Եւ ամէն մէկ մե-
քենովթին չորս անկիւններուն վրայ չորս ուս կար. և ուսերը նոյն
35 իսկ մեքենովթէն էին։ Ու մեքենով-
թին գլուխը՝ կէս կանգուն բարձրութեամբ բոլորակ մը կար. ու մեքենովթին գլխուն վրայ եղող եզերքը ու սպառուածները իրմէ
36 էին։ Ու եզերքներուն տախտակ-
ներուն վրայ ու սպառուածներուն վրայ՝ քերովբէներ, առիւծներ ու արմաւենիներ քանդակուած էր, ամէն մէկ տեղին յարմարութեանը համեմատ. ու անոնց բոլորտիքը
37 կախուած զարդեր կար։ Տասը
մեքենովթներն ալ այսպէս ըրաւ. ամենուն ձուլուածքը, չափը ու ձևը մէկ էր։

հ բՄն. դ. 6։

38 Եւ հտասը հատ պղնձէ աւազան
շինեց. ամէն մէկ աւազանը քառսուն մարով կը լեցուէր. ու ամէն մէկ աւազանը չորս կանգուն էր. ու տասը մեքենովթներուն վրայ
39 մէյմէկ աւազան կար։ Եւ հինգ
մեքենովթը տանը աջ կողմը՝ ու հինգ մեքենովթը տանը ձախ կողմը դրաւ. ու ծովը տանը աջ կողմը՝ հարաւոյ դէմ՝ դէպ 'ի արևելք դրաւ։
40 Եւ Քիրամ՝ աւազանները, թի-
ակները ու կոնքերը շինեց. ու Քիրամ կատարեց ան բոլոր գործքերը՝ որ Տէրոջը տանը համար Սողոմոն թագաւորին կը շինէր.
41 Այսինքն երկու սիւները, ու սիւ-
ներուն գլուխը եղող խոյակներուն երկու գունտերը, և սիւներուն գլուխը եղող խոյակներուն երկու գունտերը ծածկելու համար երկու
42 ցանցակերպ զարդերը, Ու երկու
ցանցակերպ զարդերուն չորս հարիւր նուռերը, այսինքն սիւներուն վրայի խոյակներուն երկու գունտերը ծածկելու համար՝ ամէն մէկ ցանցակերպ զարդին վրայ երկու
43 կարգ նուռեր։ Եւ տասը մեքե-
նովթները, ու մեքենովթներուն
44 վրայի տասը աւազանները, Ու մէկ
ծովը, ու ծովին տակի տասներ-
45 կու եզները, նԵւ կաթսաները, ու
թիակները, ու կոնքերը. և աս բոլոր կարասիները որ Քիրամ Սողոմոն թագաւորին շինեց Տէրոջը տանը համար, փայլուն պղնձէ էին։
46 ծԹագաւորը զանոնք Յորդանանու
դաշտին մէջ թանձր հողի մը վրայ ձուլել տուաւ ժՍոկքովթի ու
47 ջՍարթանի մէջտեղը։ Եւ Սողո-
մոն աս կարասիները առանց կշռելու ձգեց. վասն զի խիստ շատ էին. այնպէս որ պղնձին կշիռքը ռհամրանքի չէր գար։
48 Եւ Սողոմոն՝ Տէրոջը տանը բոլոր
կարասիները շինեց. նխնկին ոսկի սեղանը, ու վրան ոառաջաւորութեան հացը դնելու ոսկի սեղա-
49 նը, Եւ դաբիրին առջևի զուտ ոս-
կիէ աշտանակները, որոնց հինգը աջ կողմն էին, ու հինգը ձախ կողմը. և ոսկիէ ծաղիկները, ու ճրա-
50 գները, ու ունելիները, Եւ զուտ
ոսկիէ գաւաթները, բազմակալները, կոնքերը, խնկամանները և բուրվառները, ու ներքին տանը՝ այսինքն սրբութեանց սրբութիւնին դռներուն, ու տանը՝ այսինքն տաճարին դռներուն ոսկի ծղխնիները։
51 Այսպէս Տէրոջը տաճարին համար՝ Սողոմոն թագաւորին բոլոր շինած գործքերը լմնցան. ու Սողոմոն պիր հօրը Դաւիթին նուիրած բաները՝ արծաթը ու ոսկին ու անօթները տարաւ, Տէրոջը տանը գանձերուն մէջը դրաւ։

Ն. Ք. ՂՔ.
1005

ջՀմր 17, 18։

նԵլ. իէ. 3։ բՄն. դ. 16։

ծ բՄն. դ. 17։

ժՆն. լգ. 17։

ջՅես. գ. 16։

ռ աՄն. իբ. 14։

նԵլ. լէ. 25, 26։

ոԵլ. իե. 30։ Ղև. իդ. 5—8։

նԵլ. լէ. 10, 11։

պբԹագ. ը. 11։ բՄն. ե. 1։

## ԳԼ. Ը

1 Տաճարին նաւակատեաց հանդէսը։ 12, 54 Սողոմոնին օրհնութիւնը. 22 անոր աղօթքը. 62 անոր մատուցած խաղաղութեան զոհերը։

1 Ան ատենը աՍողոմոն՝ Իսրայէլի
ծերերը, ու ցեղերուն բոլոր իշխանները, Իսրայէլի որդւոց նահապետները, Սողոմոն թագաւորին քովը՝ Երուսաղէմ ժողվեց, բոր Տէրոջը ուխտին տապանակը գԴաւիթին քաղաքէն՝ այսինքն Սիոնէն
2 հանեն։ Եւ Իսրայէլի բոլոր մար-
դիկները եօթներորդ ամսուն՝ Անթանի ամսուն մէջ՝ դտօնին ատե-

աբՄն. ե. 2, 3։

բբԹագ. զ. 17։

գբԹագ. ե. 7, 9։ զ. 12, 16։

դՂև. իգ. 34։ բՄն. է. 8։

Ն. Ք. ԴՔ. 1004

ի Թուղ. դ. 15 ։ բ Օր. լա. 9 ։ Յես. գ. 3, 6 ։ ա Մն. ժե. 14, 15 ։
լ Գէ. է. 4 ։ բ Մն. ա. 3 ։
խ բ Թագ. զ. 13 ։
ծ բ Թագ. զ. 17 ։
կ Ել. իզ. 33, 34 ։ Գէ. զ. 19 ։
հ Գէ. զ. 27 ։
ձ Ել. իե. 14, 15 ։
ղ բ Մն. ե. 9 ։
ճ Ել. իե. 21 ։ բ Օր. ժ. 2 ։
մ բ Օր. ժ. 5 ։ Եբր. թ. 4 ։
յ Ել. խ. 20 ։
ն Ել. լդ. 27, 28 ։ բ Օր. դ. 13 ։ Հմր 21 ։
շ Ել. խ. 34, 35 ։ բ Մն. ե. 13, 14 ։ է. 2 ։
ո բ Մն. զ. 1, ևն ։
չ Ղև. ժզ. 2 ։ Սաղ. ժը. 11 ։ ղէ. 2 ։
պ բ Թագ. է. 13 ։
ջ Սաղ. ճլբ. 14 ։
ռ բ Թագ. զ. 18 ։
ս Ղու. ա. 68 ։
վ բ Թագ. է. 5, 25 ։
տ բ Թագ. է. 6 ։ բ Մն. զ. 5, ևն ։
ր Հմր 29 ։ բ Օր. ժբ. 11 ։
ց ա Թագ. ժզ. 1 ։ բ Թագ. է. 8 ։ ա Մն. իը. 4 ։

նը՝ Սողոմոն թագաւորին քովը
3 ժողվուեցան ։ Ու Իսրայէլի բոլոր
ծերերը եկան . ի ու քահանաները
4 տապանակը վերցուցին ։ Եւ Տէ-
րոջը տապանակը , լ ու ժողովքի
խորանը , և խորանին մէջը եղած
բոլոր սուրբ անօթները հանեցին .
ու զանոնք քահանաները ու Ղև-
5 տացիները հանեցին ։ Եւ Սողոմոն
թագաւորը ու անոր քովը ժող-
վուած Իսրայէլին բոլոր ժողովքը
անոր հետ՝ տապանակին առջևը ըլ-
լալով , խ ոչխարներ ու արջառներ
կը զոհէին , այնչափ շատ որ անթիւ
6 ու անհամար էին ։ Եւ քահանա-
ները ծ Տէրոջը ուխտին տապանակը
ներս տարին կ իր տեղը՝ տանը դաբի-
րը՝ սրբութիւն սրբութեանցը ։ հ Քե-
րովբէներուն թևերուն տակը
7 դրին . Քանզի քերովբէները տապա-
նակին տեղւոյն վրայ իրենց թևերը
կը տարածէին , ու քերովբէները
վերէն կը ծածկէին տապանակը ու
8 անոր ձողերը ։ Եւ ձ ձողերը երկըն-
ցուցին , այնպէս որ ձողերուն ծայ-
րերը ղ Սրբութենէն կ'երևնային
դաբիրին առջևը . բայց դուրսէն
չէին երևնար . ու մինչև աս օրս հոն
9 են ։ ճ Տապանակին մէջը ուրիշ
բան չկար , մ բայց միայն երկու քա-
րէ տախտակները՝ որ Մովսէս Քո-
րեբի մէջ յ հոն դրաւ . ն որոնցմով
Տէրը Իսրայէլի որդւոցը հետ՝ ա-
նոնց Եգիպտոսի երկրէն ելած ա-
10 տենը ուխտ ըրաւ ։ Ու երբոր քա-
հանաները սրբութենէն ելան ,
11 ամպը շ լեցուց Տէրոջը տունը . Եւ
ամպին պատճառաւը քահանանե-
րը չէին կրնար հոն կենալ , որ ի-
րենց պաշտօնը կատարեն . վասն զի
Տէրոջը փառքը Տէրոջը տունը լե-
ցուցեր էր ։
12 ո Ան ատենը Սողոմոն ըսաւ . Տէ-
րը ըսաւ որ ինքը չ մառախուղի մէջ
13 կը բնակի ։ պ Ահա քեզի բնակու-
թեան համար տուն , ջ ու յաւի-
տեան քու նստելուդ համար տեղ
14 շինեցի ։ Եւ թագաւորը իր երեսը
դարձուց , ու ռ Իսրայէլի բոլոր ժո-
ղովքը օրհնեց . ու Իսրայէլի բոլոր
ժողովքը ոտքի վրայ կայներ էին .
15 Եւ անիկայ ըսաւ . ս Օրհնեա՜լ ըլլայ
Իսրայէլի Տէր Աստուածը , որ վ իր
բերնովը իմ հօրս Դաւիթին խօսք
տուաւ , ու իր ձեռքովը կատարեց .
16 քանզի ըսաւ . տ Իմ ժողովուրդս
Իսրայէլը Եգիպտոսէն հանած օրէս
'ի վեր՝ Իսրայէլի բոլոր ցեղերէն
բնաւ մէկ քաղաք մը չընտրեցի
տուն շինելու համար , որ ր իմ ա-
նունս հոն ըլլայ . բայց ց Դաւիթը
ընտրեցի , որ իմ ժողովուրդիս
Իսրայէլին վրայ Իշխան ըլլայ ։
17 Եւ ւ իմ հայրս Դաւիթ միտք ու-
նէր որ Իսրայէլի Տէր Աստուծոյն
18 անուանը տուն մը շինէ . փ Բայց
Տէրը իմ հօրս Դաւիթին ըսաւ .
Որովհետև դուն միտքդ դրիր , որ
իմ անուանս տուն շինես , աղէկ
ըրիր որ այս բանը միտքդ դրիր .
19 Սակայն ք տունը դուն պիտի չշի-
նես , հապա քու որդիդ , որ քու
երանքէդ պիտի ելլէ , անիկայ իմ
20 անուանս՝ տունը պիտի շինէ ։ Եւ
հիմա Տէրը իր ըսած խօսքը կատա-
րեց , ու ես իմ հօրս Դաւիթին
տեղը յաջորդեցի , ու օ Տէրոջը ը-
սածին պէս՝ Իսրայէլի աթոռը
նստայ , ու Իսրայէլի Տէր Աստու-
ծոյն անուանը՝ այս տունը շինեցի .
21 Եւ հոն տեղ մը պատրաստեցի տա-
պանակին համար , որուն մէջը կե-
ցած է ա Տէրոջը ուխտը , որն որ մեր
հայրերուն հետ ըրաւ , երբոր զա-
նոնք Եգիպտոսի երկրէն դուրս հա-
նեց ։
22 Եւ Սողոմոն բ Տէրոջը սեղանին
առջևը Իսրայէլի բոլոր ժողովքին
դիմացը կայնելով , գ ձեռքերը դէպ
23 'ի երկինքը տարածեց , Ու ըսաւ .
Ո՛վ Տէր Աստուած Իսրայէլի , վե-
րը երկինքը ու վարը երկրի վրայ
դ քեզի պէս Աստուած չկայ , որ
ե քու առջևդ իրենց բոլոր սրտովը
քալող ծառաներուդ հետ զ ուխտ
24 ու ողորմութիւն կը պահես . Դուն
քու ծառայիդ՝ իմ հօրս Դաւիթին
ըրած խոստմունքդ պահեցիր , ու
բերնովդ ըսածդ ձեռքովդ կատա-
րեցիր , ինչպէս որ այսօր կ'երևնայ ։
25 Եւ հիմա ով Տէր Աստուած Իսրա-
յէլի , պահէ ան խոստմունքդ , որն
որ քու ծառայիդ՝ իմ հօրս Դա-
ւիթին ըրիր , ու ըսիր . է Իմ առ-
ջևս Իսրայէլի աթոռին վրայ նըս-
տող մարդ՝ քեզմէ պակաս պիտի
չըլլայ . միայն թէ քու որդիքդ ի-
րենց ճամբաներուն զգուշութիւն
ընեն , ու իմ առջևս քալեն , ինչ-
պէս որ դուն իմ առջևս քալեցիր ։
26 ը Եւ հիմա ո՛վ Աստուած Իսրայէլի ,
թող քու ծառայիդ՝ իմ հօրս
Դաւիթին ըսած խօսքդ հաստա-
տուի ։
27 Բայց թ միթէ Աստուած իրաւցը-
նէ ժ երկրիս վրայ պիտի բնակի՞ .
ահա երկինքը ու ժ երկնից երկին-
քը քեզ չեն կրնար պարունակել .
ո՜ւր կը մնայ աս իմ շինած տունս ։
28 Սակայն ո՛վ Տէր Աստուած իմ , քու
ծառայիդ աղօթքին ու խնդրուած-
քին նայէ , որ քու ծառայիդ այսօր
քու առջևդ ըրած պաղատանքը ու
29 աղօթքը լսես . Որպէս զի աս տանը
վրայ գիշեր ցորեկ քու աչքերդ բաց
ըլլան , ան տեղւոյն վրայ՝ որուն

Ն. Ք. ԴՔ. 1004

փ բ Թագ. է. 2 ։ ա Մն. ժէ. 1 ։
փ բ Մն. զ. 8, 9 ։
ք բ Թագ. է. 5. 12, 13 ։ Գէ. ե. 3, 5 ։
օ ա Մն. իը. 5, 6 ։
ա Հմր 9 ։ բ Օր. լա. 26 ։
բ բ Մն. զ. 12, ևն ։
գ Ել. թ. 33 ։ Եզր. թ. 5 ։ Ես. ա. 15 ։
դ Ել. ժե. 11 ։ բ Թագ. է. 22 ։
ե Ծն. ժէ. 1 ։ Գէ. գ. 6 ։ դ Թագ. ի. 3 ։
զ բ Օր. է. 9 ։ Նեէմ. ա. 5 ։ Դան. թ. 4 ։
է Գէ. բ. 4 ։ բ Թագ. է. 12, 16 ։
ը բ Թագ. է. 25 ։
թ բ Մն. բ. 6 ։ Ես. կզ. 1 ։ Երեմ. իգ. 24 ։ Գոր. է. 49 ։ ժէ. 24 ։
ժ բ Կոր. ժբ. 2 ։

Ն. Ք. ԴՃ.
1004

դ Բ Օր. ԺԲ. 11։
ի Բ Մն. Ի. 9։ Նեեմ. Ա. 6։
Ղ Ել. ԻԲ. 11։ Ղև. Ե. 1։
Ի Բ Օր. ԻԵ. 1։
* Եբր. ճամբան
Ը Ղև. ԻԶ. 17։ Բ Օր. ԻԸ. 25։
Ի Ղև. ԻԶ. 39, 40։ Նեեմ. Ա. 9։
ծ Ղև. ԻԶ. 19։ Բ Օր. ԻԸ. 23։
Է Սաղ. ԻԵ. 4։ ԻԷ. 11։ ՂԶ. 12։ Ճխդ. 8։
Լ Ա Թագ. ԺԲ. 23։
Ի Ղև. ԻԶ. 16, 25, 26։ Բ Օր. ԻԸ. 21, 22, 27, 38, 42, 52։ Բ Մն. Ի. 9։
† Եբր. դըռներուն

համար ըսիր թէ՝ դ Իմ անունս
հոն պիտի ըլլայ. այնպէս՝որ՝ աս
տեղը քու ծառայիդ ըրած աղօթ-
30 քը լսես ։ ի Ուրեմն քու ծառայիդ՝
և քու ժողովուրդիդ Իսրայէլին աս
տեղը ըրած աղօթքները լսես. այո
քու բնակութեանդ տեղէն երկին-
քէն լսես, ու լսած ատենդ նե-
րես ։
31 Թէ որ մէկը իր ընկերին դէմ
մեղանչէ, ու անոր երդում ընել
տալու համար՝ Ղանոր երդումի ա-
ռաջարկէ, ու երդումը աս տունը
32 քու սեղանիդ առջևը գայ, Ան
ատենը դուն երկինքէն լսես ու կա-
տարես, ու քու ծառաներդ դա-
տես, Ի և յանցաւորը դատապար-
տես, ու անոր *ըրածը անոր գլու-
խը բերես. և արդարը արդարացը-
նես, ու անոր արդարութեանը
չափովը անոր հատուցում ընես ։
33 Ըւ թէ որ քու ժողովուրդդ
Իսրայէլը՝ քեզի դէմ մեղանչելնուն
համար՝ իրենց թշնամիներուն առ-
ջևը յաղթուին, ու Ի քեզի դառնան
և քու անուանդ փառք տան, ու
աս տանս մէջ քեզի աղօթք ու ա-
34 ղաչանք ընեն, Ան ատենը դուն եր-
կինքէն լսես, և քու ժողովուրդիդ
Իսրայէլին մեղքը ներես, ու անոնց
հայրերուն տուած երկիրդ՝ զանոնք
դարձընես ։
35 Թէ որ անոնց քեզի դէմ մեղք
գործելուն համար ծ երկինքը գո-
ցուի, ու անձրև չգայ. ու անոնք
աս տեղս քեզի աղօթք ընեն, և քու
անուանդ փառք տան, ու զանոնք
նեղելուդ համար՝ իրենց մեղքերէն
36 դառնան, Ան ատենը դուն երկին-
քէն լսես, և քու ծառաներուդ ու
քու ժողովուրդիդ Իսրայէլին մեղ-
քը ներես, որ Է անոնց սորվեցընես
Լ այն աղէկ ճամբան, որուն մէջը
պիտի քալեն. ու քու ժողովուր-
դիդ ժառանգութիւն տուած երկ-
րիդ վրայ անձրև տաս ։
37 Ի թէ որ երկրի վրայ սով, կամ
ժանտախտ, կամ խորշակահարու-
թիւն, կամ արմտեաց դալուկ, կամ
մարախ, կամ թրթուր ըլլայ, կամ
անոնց թշնամիները զանոնք իրենց
† բնակած երկրին մէջը նեղեն, կամ
որ և իցէ հարուած կամ հիւան-
38 դութիւն ըլլայ, Քու բոլոր ժողո-
վուրդէդ Իսրայէլէն որ և իցէ մարդ՝
աղօթք մը ու խնդրուածք մը ընե-
լու ըլլայ, ու իւրաքանչիւր մարդ
իր սրտին ախտը ճանչնալով՝ ձեռ-
քերը դէպ 'ի աս տունը երկընցընէ,
39 Ան ատենը դուն երկինքէն՝ քու
բնակութեանդ տեղէն լսես, ու
ներես, ու ընես. և ամէն մարդու՝
իր բոլոր ճամբաներուն համեմատ

հատուցում ընես, անոր սիրտը
գիտնալուդ համար. վասն զի ծ բո-
լոր մարդոց որդիներուն սիրտը մի-
40 նակ դուն գիտես ։ Է Որպէս զի
քեզմէ վախնան իրենց բոլոր օրե-
րուն մէջը՝ որչափ ժամանակ որ մեր
հայրերուն տուած երկրիդ վրայ
պիտի ապրին ։
41 Ու քու ժողովուրդէդ Իսրայէլէն
չեղող՝ և հեռաւոր երկրէ մը քու
անուանդ համար եկող օտարականն
42 ալ՝ (Վասն զի քու մեծ անունդ
ու հ զօրաւոր ձեռքդ ու երկընցած
բազուկդ պիտի լսեն,) թէ որ գայ
ու աս տանս մէջ աղօթք ընէ,
43 Դուն երկինքէն քու բնակութեանդ
տեղէն լսես, և օտարականին քեզի
ըրած ամէն խնդրուածքը կատա-
րես, Յ որ երկրիս ամէն ժողովուրդ-
ները քու անունդ ճանչնան, ու
քու ժողովուրդիդ Իսրայէլին պէս
Զ քեզմէ վախնան, և գիտնան թէ
աս իմ շինած տանս վրայ քու
անունդ կոչուած է ։
44 Երբոր քու ժողովուրդդ իր թըշ-
նամիին դէմ պատերազմի երթայ
ան ճամբով՝ որ դուն պիտի ղրկես
զանոնք, թէ որ անոնք աս քու
ընտրած քաղաքիդ, ու քու ա-
նուանդ համար աս իմ շինած տանս
կողմը նայելով՝ Տէրոջը աղօթք ը-
45 նեն, Երկինքէն անոնց աղօթքը ու
խնդրուածքը լսես, և անոնց ի-
րաւունք ընես ։
46 Երբոր քեզի դէմ մեղք գործեն,
(է քանզի մեղք չգործող մարդ չը-
կայ,) ու անոնց բարկանալով՝ զա-
նոնք թշնամիին ձեռքը մատնես, ու
անոնց գերեվարները ʃ թշնամիին
հեռու կամ մօտ երկիրը գերի տա-
47 նին զանոնք, ɔ թէ որ ան իրենց գե-
րութեան երկրին մէջը զեղջի գան ու
դառնան, և իրենց գերեվարներուն
երկրին մէջը քեզի աղաչեն ու Ն ը-
սեն. Մեղք գործեցինք, անօրէ-
նութիւն ու անիրաւութիւն ը-
48 րինք. Եւ թէ որ զանոնք գերի տա-
նող թշնամիներուն երկրին մէջը՝
Ն իրենց բոլոր սրտովը ու իրենց բո-
լոր հոգիովը քեզի դառնան, ու ի-
րենց երկրին՝ որ իրենց հայրերուն
տուիր, և քու ընտրած քաղաքիդ,
ու քու անուանդ համար իմ շինած
տանս կողմը նայելով՝ " քեզի աղօթք
49 ընեն. Դուն երկինքէն քու բնա-
կութեանդ տեղէն անոնց աղօթքը
ու խնդրուածքը լսես, ու անոնց
50 իրաւունք ընես, Եւ քու ժողո-
վուրդիդ քեզի դէմ ըրած մեղքը ու
բոլոր յանցանքը ներես. ու Ն այն-
պէս ընես՝ որ անոնց գերեվարները
անոնց վրայ գթան, և անոնց ողոր-
51 մութիւն ընեն. Քանզի " անոնք

Ն. Ք. ԴՃ.
1004

ծ Ա Թագ. ԺԶ. 7։ Ա Մն. ԻԸ. 9։ Սաղ. ԺԱ. 4։ Երեմ. ԺԷ. 10։ Գոր. Ա. 24։
Է Սաղ. ՃԼ. 4։
հ Բ Օր. Գ. 24։
Յ Ա Թագ. ԺԷ. 46։ Դ Թագ. ԺԹ. 19։ Սաղ. ԿԷ. 2։
Զ Սաղ. ՃԲ. 15։
է Բ Մն. Զ. 36։ Առակ. Ի. 9։ Ժող. Է. 20։ Յակ. Գ. 2։ Ա Յով. Ա. 8, 10։
ʃ Ղև. ԻԶ. 34, 44։ Բ Օր. ԻԸ. 36, 64։
ɔ Ղև. ԻԶ. 40։
Ն Նեեմ. Ա. 6։ Սաղ. ՃԶ. 6։ Դան. Թ. 5։
Ն Երեմ. ԻԹ. 12, 13, 14։
" Դան. Զ. 10։
Ն Եզր. Է. 6։ Սաղ. ՃԶ. 46։
" Բ Օր. Թ. 29։ Նեեմ. Ա. 10։

Ն. Ք. 1004

Ը Օր. Դ. 20։ Երեմ. ԺԱ. 4։

քու ժողովուրդդ ու քու ժառան-
գութիւնդ են, որ զանոնք Եգիպտո-
սէն՝ Երկաթի հնոցին մէջէն հանե-
52 ցիր ։ Եւ քու ծառայիդ խնդ-
րուածքին ու քու ժողովուրդիդ
Իսրայէլին խնդրուածքին՝ քու
աչքդ [illegible] բաց ըլլայ, որ ա-
նոնց քեզի ըրած ամէն աղաղակը
53 լսես ։ Քանզի երկրին ամէն ժողո-
վուրդներէն դուն զատեցիր անոնք,
որ քու ժառանգութիւնդ ըլլան.
ինչպէս որ քու ծառայիդ Մովսէ-
սին ձեռքովը խօսեցար, երբոր մեր
հայրերը Եգիպտոսէն հանեցիր, ով
Տէր Եհովայ ։

Ել. ԺԹ. 5։ Բ Օր. Թ. 26, 29։ ԺԴ. 2։

54 Երբոր Սողոմոն աս բոլոր աղօթ-
քը ու խնդրուածքը Տէրոջը ըրաւ
լմնցուց, Տէրոջը սեղանին առջեւէն
ելաւ, ուր որ ձեռքը դէպ՚ի եր-
կինքը երկնցուցած ծունկ չոքեր
55 էր, Ու ոտքի վրայ կայնելով, Իս-
րայէլին բոլոր ժողովքը բարձր ձայ-
56 նով օրհնեց, ու ըսաւ. Օրհնեալ
ըլլայ Տէրը, որ իր բոլոր ըսածին
համեմատ՝ իր Իսրայէլ ժողովուր-
դին հանգստութիւն տուաւ, Ու
իր ծառային Մովսէսին ձեռքովը
խօսած ամէն բարի խօսքերէն բնաւ
57 մէկ խօսք մը գետինը չինկաւ ։ Մեր
Տէր Աստուածը մեզի հետ ըլլայ,
ինչպէս որ մեր հայրերուն հետն էր.
ու մեզ չթողու, ու մեզ երեսէ
58 չձգէ, Եւ մեր սիրտը իրեն դարձը-
նէ, որ իր բոլոր ճամբաներուն մէջը
քալենք, ու պահենք իր պատուի-
րանքները, կանոնները ու իրա-
ւունքները, որոնք մեր հայրերուն
59 պատուիրեց ։ Եւ Տէրոջը առջեւը
մատուցած աս պաղատանքի խօս-
քերս՝ ցորեկու գիշեր մեր Տէր Աս-
տուծոյն մօտենան, որ օրէ օր պա-
տահած գործքերուն մէջը՝ իր ծա-
ռային ու իր Իսրայէլ ժողովուրդին
60 իրաւունք ընէ. Որ երկրիս ամէն
ժողովուրդները գիտնան, թէ Ե-
հովան ինքն է Աստուածը, ուրիշ
61 մը չկայ ։ Ու ձեր սիրտը մեր Տէր
Աստուծոյն առջեւ ուղիղ ըլլայ, որ
աս օրուան պէս՝ անոր կանոններուն
մէջ քալէք, ու անոր պատուի-
րանքները պահէք ։

Բ Թագ. Զ. 18։

Ը Օր. ԺԲ. 10։ Յես. ԻԱ. 45։ ԻԳ. 14։

Բ Օր. ԼԱ. 6։ Յես. Ա. 5։

Սաղ. ՃԺԹ. 36։

Յես. Դ. 24։ Ա Թագ. ԺԷ. 46։ Դ Թագ. ԺԹ. 19։

Բ Օր. Դ. 35, 39։

Գ Լ. ԺԱ. 4։ ԺԵ. 3, 14։ Դ Թագ. Ի. 3։

Բ Մն. Է. 4, եւ։

62 Եւ թագաւորը ու բոլոր Իսրա-
յէլը անոր հետ՝ Տէրոջը առջեւը
63 զոհեր մատուցին ։ Եւ Սողոմոն Տէ-
րոջը մատուցած խաղաղութեան
զոհին համար՝ քսանուերկու հազար
արջառ, ու հարիւր քսան հազար
ոչխար զոհ ըրաւ. և թագաւորը ու
բոլոր Իսրայէլի որդիքը Տէրոջը
64 տանը նաւակատիքը ըրին ։ Ան
օրը թագաւորը Տէրոջը տանը առ-
ջեւը եղող գաւիթին մէջտեղը սըր-
բեց. քանզի հոն ողջակէզները,
հացի ընծաները, ու խաղաղու-
թեան զոհերուն ճարպերը հոն մա-
տուց. վասն զի Տէրոջը առջեւի
պղնձէ սեղանը պզտիկ կու գար աս
ողջակէզները, հացի ընծաները ու
խաղաղութեան զոհերուն ճարպերը
ընդունելու ։

Բ Մն. Է. 7։

65 Եւ ան ատենը Սողոմոն ու անոր
հետ բոլոր Իսրայէլը՝ մէկ մեծ ժո-
ղով մը՝ Եմաթի մուտքէն մինչև
Եգիպտոսի հեղեղատը՝ մեր Տէր
Աստուծոյն առջեւը եօթը օր՝ ու
եօթը օր ալ՝ այսինքն տասնու-
66 չորս օր տօնն ըրին ։ Եւ Սողո-
մոն ութերորդ օրը ժողովուրդը
արձակեց, որոնք թագաւորը
օրհնեցին, ու իրենց վրանները
գացին, զուարթ սրտով մը ու-
րախանալով ան բոլոր բարիքնե-
րուն համար, որ Տէրը իր Դաւիթ
ծառային ու իր Իսրայէլ ժողո-
վուրդին ըրաւ ։

Ն. Ք. 1004

Բ Մն. Դ. 1։

Թուոց ԼԴ. 8։ Յես. ԺԳ. 5։ Դատ. Գ. 3։ Դ Թագ. ԺԴ. 25։

Բ Ծն. ԺԵ. 18։ Թուոց ԼԴ. 5։

Բ Մն. Է. 8։

Չ Հմր 2։ Ղև. ԻԳ. 34։

Բ Մն. Է. 9, 10։

## ԳԼ. Թ

1 Աստուած Սողոմոնին հետ ուխտ կ՚ընէ տեսիլ-
քի մէջ ։ 10 Սողոմոնին ու Քիրամին իրարու
խրկած ընծաները ։ 15 Սողոմոնին գործքե-
րուն մէջը՝ օտարազգիները անոր ստորին ծա-
ռաներն էին, և Իսրայէլացիք պատուաւոր
ծառաները ։ 24 Փարաւոնին աղջիկը իր տու-
նը կը փոխադրուի ։ 25 Սողոմոնին տարեկան
հանդիսաւոր զոհերը ։ 26 Սողոմոնին նաւերը
Ոփիրէն ոսկի կը բերեն ։

1 Երբոր Սողոմոն՝ Տէրոջը տունը,
Ու թագաւորական տունը,
և իր սրտին բոլոր ուզած բաները
2 շինեց լմնցուց, Տէրը Սողոմոնին
նորէն երեւցաւ, ինչպէս որ Գա-
3 բաւոնի մէջ երեւցեր էր ։ Եւ Տէրը
անոր ըսաւ. Իմ առջեւս ըրած ա-
ղօթքդ ու պաղատանքդ լսեցի. և
աս շինած տունդ սրբեցի, Որ իմ
անունս յաւիտեան հոն դնեմ. Ու
իմ աչքերս ու սիրտս միշտ հոն պի-
4 տի ըլլան ։ Եւ թէ որ դուն իմ
առջեւս՝ քու հօրդ Դաւիթին քա-
լածին պէս, կատարեալ սրտով
և ուղղութեամբ քալես, ու բոլոր
քեզի պատուիրածներս ընես, ու
իմ կանոններս ու դատաստաններս
5 պահես, Ան ատենը քու թագաւո-
րութեանդ աթոռը Իսրայէլի վրայ
յաւիտեան պիտի հաստատեմ,
ինչպէս որ քու հօրդ Դաւիթին
խօսեցայ՝ ըսելով. Իսրայէլի աթո-
ռին վրայ քեզմէ մարդ պակաս պի-
6 տի չըլլայ ։ Եթէ որ դուք կամ ձեր
որդիքը ինծմէ խոտորիք, ու ձեր
առջեւը դրած պատուիրանքներս ու
կանոններս չպահէք, ու երթաք
ուրիշ աստուածներու ծառայու-
թիւն ընէք, և անոնց երկրպա-
7 գութիւն ընէք, Ան ատենը Իս-
րայէլը պիտի ջնջեմ ան երկրին
վրայէն, որն որ իրենց տուի. ու

Իրր 992

Բ Մն. Է. 11, եւ։

Բ Գլ. Է. 1։

Գ Մն. Ը. 6։

Գ Գլ. Գ. 5։

Բ Թագ. Ի. 5։ Սաղ. Ժ. 17։

Գ Գլ. Ը. 29։

Բ Օր. ԺԱ. 12։

Գ Գլ. ԺԱ. 4, 6, 38։ ԺԴ. 8։ ԺԵ. 5։

Բ Ծն. ԺԷ. 1։

Բ Թագ. Է. 12, 16։ Գլ. Ը. 4։ Զ. 12։ Ա Մն. ԻԲ. 10։ Սաղ. ՃԼԲ. 12։

Բ Թագ. Է. 14։ Բ Մն. Է. 19, 20։ Սաղ. ՁԹ. 30, եւ։

Բ Օր. Դ. 26։ Դ Թագ. ԺԷ. 23։ ԻԵ. 21։

Ն. Ք. Գ. Ք.
Իբր 992

Ջ Երեմ. Է. 14 ։
Ծ Բ Օր. ԻԸ. 37 ։ Սաղ. ԽԴ. 14 ։
Յ Բ Մն. Է. 21 ։
Հ Բ Օր. ԻԹ. 24, 25, 26 ։ Երեմ. ԻԲ. 8, 9 ։

Ջ իմ անուանս համար աս սրբած
տունս երեսէս պիտի ձգեմ․ Ծ և
Իսրայէլը բոլոր ազգաց մէջ առակ
8 ու կատակ պիտի ըլլայ ։ Եւ Յաս
բարձր տանը համար՝ ամէն քովէն
անցնողը պիտի զարմանայ, ու սու-
լելով պիտի ըսէ․ ՙՏէրը ինչու
համար աս երկրիս ու աս տանս այս-
9 պէս ըրաւ ։ Եւ պիտի ըսեն․ Վասն
զի անոնք իրենց Տէր Աստուածը
թողուցին, որ անոնց հայրերը Ե-
գիպտոսի երկրէն հաներ էր, ու ու-
րիշ աստուածներու յարեցան, և
անոնց երկրպագութիւն ու ծառա-
յութիւն ըրին․ աս պատճառաւ
Տէրը անոնց վրայ աս բոլոր չարիք-
ները բերաւ ։

Ճ Գլ. Զ. 37, 38 ։ Է. 1 ։ Բ Մն. Ը. 1 ։
Ղ Տես Բ Մն. Ը. 2 ։

10 Ճ Եւ Սողոմոն երկու տունը՝ Տէ-
րոջը տունը ու թագաւորական
տունը քսան տարուան մէջ շինելէն
11 ետքը, Ղ Տիւրոսի թագաւորը Քի-
րամ՝ եղևնափայտերով, մայր փայ-
տերով, ու ոսկիով, անոր ամէն
ուզածին համեմատ Սողոմոնին օգ-
նութիւն ընելուն համար, Սողոմոն
թագաւորն ալ ան ատենը Քիրամին
քսան քաղաք տուաւ Գալիլեայի
12 երկրին մէջ ։ Ու Քիրամ Տիւրո-
սէն ելաւ, որ Սողոմոնին իրեն
տուած քաղաքները տեսնէ․ և իր
13 աչքերուն հաճոյ չերևցան․ Ու ը-
սաւ․ Ե՜ղբայր, աս ի՞նչ քաղաքներ
են՝ որ ինծի տուիր․ Ց ու անոնց ա-
նունը * Քաբուղի երկիր կոչեց մինչև
14 աս օրս ։ Եւ Քիրամ՝ թագաւորին
հարիւր քսան տաղանդ ոսկի ղրր-
կեց ։

Ց Յես. ԺԹ. 27 ։
* Եբ՝ անհաճոյ, կամ՝ կապեալ ։
Ճ Գլ. Ե. 13 ։
Մ Հմր 24 ։ Բ Թագ. Ե. 9 ։
Ն Յես. ԺԹ. 36 ։
Ղ Յես. ԺԵ. 11 ։
Գ Յես. ԺԶ. 10 ։ Դատ. Ա. 29 ։
Ղ Յես. ԺԶ. 10 ։

15 Ու Ճ Սողոմոն թագաւորին դրած
հարկին պատճառը աս էր՝ որ Տէ-
րոջը տունը, իր տունը, ու Մ Մե-
լոնը, ու Երուսաղեմի պարիսպը,
Ն Հասորը, Ղ Մակեդդովը ու Գ Գա-
16 զերը շինէ ։ (Քանզի Եգիպտոսի
Փարաւոն թագաւորը ելլելով՝ Գա-
զերը առեր, ու զանիկայ կրակով
այրեր էր, և ան Ղ քաղաքին մէջը
բնակող Քանանացիները մեռցընե-
լով, զանիկայ իր աղջկանը Սողո-
մոնին կնկանը օժիտ տուեր էր ։)

Իբր 1014
Ղ Յես. ԺԶ. 3 ։ ԻԱ. 22 ։ Բ Մն. Ը. 5 ։
Ջ Յես. ԺԹ. 44 ։ Բ Մն. Ը. 4, 6 ։ Թ ։
Մ Գլ. Դ. 26 ։
Ն Հմր 1 ։

17 Ու Սողոմոն՝ Գազերը ու Ղ վարի
18 Բեթորոնը շինեց, Նաև Ջ Բաաղե-
թը ու Թադմորը երկրին անապա-
19 տին մէջ, Եւ Սողոմոնին բոլոր ըշ-
տեմարանի քաղաքները, ու Մ կառ-
քերուն քաղաքները, ու ձիաւոր-
ներուն քաղաքները, և ան բոլոր
շէնքերը, որ Սողոմոն Ն ուզեց շինել
Երուսաղեմի մէջ, Լիբանանի մէջ,
ու իր տէրութեանը բոլոր երկրին
մէջ ։

Հ Բ Մն. Ը. 7, Թ ։

20 Հ Ան բոլոր ժողովուրդները՝ որ
Ամորհացիներէն, Քետացիներէն,
Փերեզացիներէն, Խևացիներէն ու

Ն. Ք. Գ. Ք.
Իբր 992

Փ Դատ. Ա. 21, 27, 29 ։ Գ. 1 ։
Ր Յես. ԺԵ. 63 ։ ԺԷ. 12 ։
Ց Դատ. Ա. 28 ։
Ւ Տես Ղև. Ի. 25, 26 ։ Եզր. Բ. 55, 58 ։ Նեեմ. Է. 57 ։ ԺԱ. 3 ։
Ւ Ղև. ԻԵ. 39 ։
Ւ Եբր. ծառաները ։
Փ Տես Բ Մն. Ը. 10 ։

Յեբուսացիներէն մնացեր էին, և
21 Իսրայէլի որդւոցմէ չէին, Անոնց
անոնց զաւակները, Փ որ անոնցմէ
ետքը ան երկրին մէջ մնացեր էին,
Ր ու Իսրայէլի որդիքը չէին կրցեր
զանոնք բնաջինջ ընել, Սողոմոն
զանոնք Ց հարկատու ծառայ ը-
22 րաւ մինչև ցայսօր ։ Բայց Սողոմոն՝
Իսրայէլի որդիներէն իրեն Ւ ծառայ
չըրաւ․ հապա անոնք էր պատե-
րազմական մարդիկները իր Ւ սպա-
լատականները, իշխանները, զօ-
րավարները, ու իր կառքերուն
ու ձիաւորներուն վերակացուներն
23 էին ։ Սողոմոնին գործքին վրայ
Փ հինգ հարիւր յիսուն գլխաւոր իշ-
խաններ կային, որոնք բանւոր ժո-
ղովուրդին վրայ կ'իշխէին ։

Օ Գլ. Գ. 1 ։ Բ Մն. Ը. 11 ։
Ֆ Գլ. Է. 8 ։
Մ Բ Թագ. Ե. 9 ։ Գլ. ԺԱ. 27 ։ Բ Մն. ԼԲ. 5 ։
Ք Բ Մն. Ը. 12, 13, 16 ։

24 Իսկ Օ Փարաւոնին աղջիկը Դաւի-
թին քաղաքէն ելաւ, ու գնաց Ֆ իր
տունը՝ որն որ Սողոմոն անոր համար
շիներ էր․ Մ ան ատենը Մելոնը շի-
նեց ։
25 Ք Եւ Սողոմոն տարին իրեք ան-
գամ Տէրոջը համար շինած սեղա-
նին վրայ ողջակէզներ ու խաղա-
ղութեան զոհեր կը մատուցանէր,
և Տէրոջը առջևի սեղանին վրայ
խունկ կը ծխէր ։
26 Ու երբոր տունը լմնցուց, Սո-
ղոմոն թագաւորը Եդովմի երկրին
մէջ՝ Կարմիր ծովուն եզերքը՝ Ելա-
թին քովը եղող Ւ Գասիոնգաբերի
27 մէջ Ւ նաւեր շինեց ։ Ւ Եւ Քիրամ՝
Սողոմոնին ծառաներուն հետ, ծո-
վու ճամբորդութեան հմուտ եղող
իր նաւավար ծառաները ան նաւե-
28 րով ղրկեց ։ Ու անոնք Ղ Ոփիր
գացին, և անկէ չորս հարիւր քսան
տաղանդ ոսկի առին, ու Սողոմոն
թագաւորին բերին ։

Ւ Թուոց ԼԳ. 35 ։ Բ Օր. Բ. 8 ։ Գլ. ԻԲ. 49 ։
Ւ Բ Մն. Ը. 17, 18 ։
Ւ Գլ. Ժ. 11 ։
Ղ Յոբ. ԻԲ. 24 ։

ԳԼ. Ժ

1 Սաբայի թագուհին Սողոմոնին իմաստութեա-
նը վրայ կը զարմանայ ։ 14 Սողոմոնին ոսկին․
16 անոր վահանները․ 18 անոր փղոսկրեայ ա-
թոռը․ 21 անոր ամանները․ 24 անոր բերուած
ընծաները․ 26 անոր կառքերը ու ձիերը ։

Ա Բ Մն. Թ. 1, Թ ։ Մատ. ԺԲ. 42 ։ Ղուկ. ԺԱ. 31 ։
Բ Յես Դատ. ԺԴ. 12 ։ Առակ. Ա. 6 ։

1 Եւ Ա Սաբայի թագուհին Սողոմո-
նին համբաւը ու Տէրոջը անունը
լսեց․ ու եկաւ Բ որ խրթին հարց-
2 մունքներով զանիկայ փորձէ ։ Եւ
անիկայ Երուսաղէմ եկաւ խիստ
շատ զօրքով, խունկեր՝ ու խիստ
շատ ոսկի՝ ու պատուական քարեր
բեռցած ուղտերով․ և Սողոմոնին
քովը գնաց, ու բոլոր իր սրտին
3 մէջը եղածը անոր զրուցեց ։ Եւ
Սողոմոն անոր բոլոր հարցմունքնե-
րը բացատրեց․ ու բնաւ անանկ մէկ
խօսք մը չկար, որ թագաւորը չը-
4 հասկընայ ու չբացատրէ անոր ։ Եւ
Սաբայի թագուհին՝ Սողոմոնին
բոլոր իմաստութիւնը, ու անոր

Ն. Ք. ԳՔ. Թւր 992

5 շինած տունը , Եւ անոր սեղանին
կերակուրները , ու անոր ծառանե-
րուն *բնակարանները , և սպասա-
ւորներուն կայնուածքը , ու ա-
նոնց հագուստները , և անոր մատ-
ռուակները , աու †Տէրոջը տունը
ելլելու սանդուխը՝՝ տեսնելով ,
6 խելքը գլխէն գնաց . Եւ թագաւո-
րին ըսաւ . Քու վիճակիդ ու իմաս-
տութեանդ վրայով իմ երկրիս
մէջ լսած խօսքերս ճշմարիտ են ե-
7 ղեր . Բայց ես ան խօսքերուն չհա-
ւատացի , մինչև որ անձամբ եկայ
ու իմ աչքերովս տեսայ . և ահա
ինծի ատոր կէսը չպատմեցին . քու
իմաստութիւնդ ու երջանկու-
թիւնդ իմ լսած համբաւէս աւելի
8 է : բԵրանի քու մարդիկներուդ՝
երանի այս քու ծառաներուդ՝ ո-
րոնք միշտ քու առջևդ կայնելով
քու իմաստութիւնդ կը լսեն :
9 գՔու Եհովայ Աստուածդ օրհնեալ
ըլլայ , որ քեզի հաւնեցաւ , ու քեզ
Իսրայէլի աթոռին վրայ դրաւ . Ե-
հովան Իսրայէլը յաւիտեան սիրե-
լուն համար , քեզ թագաւոր ը-
րաւ , դՈր իրաւունք ու արդարու-
10 թիւն ընես : Եւ եԹագաւորին՝
հարիւր քսան տաղանդ ոսկի , ու
խիստ շատ խունկեր , ու պատուա-
կան քարեր տուաւ : Ալ անկէ
ետև այնչափ շատ խունկ չեկաւ ,
որչափ որ Սաբայի թագուհին Սո-
ղոմոն թագաւորին տուաւ :
11 զԵւ Քիրամին նաւերը՝ որ Ոփի-
րէն ոսկի կը բերէին , Ոփիրէն խիստ
շատ էալմուկ փայտեր ու պա-
12 տուական քարեր ալ բերին : ըԵւ
թագաւորը ալմուկ փայտէն յենա-
րաններ շինեց՝ Տէրոջը տանը ու
թագաւորական տանը համար , և
քնարներ ու տաւիղներ՝ երգեցող-
ներուն համար . ասանկ թալմուկ
փայտ բնաւ չեկաւ , ու չերևցաւ
մինչև ցայսօր :
13 Ու Սողոմոն թագաւորը Սաբայի
թագուհիին բոլոր ուզած ու խնդ-
րած բաները տուաւ , Սողոմոն
թագաւորը իր ‡առատաձեռնու-
թեամբը անոր տուածէն 'ի զատ :
Եւ անիկայ իր ծառաներուն հետ
դարձաւ իր երկիրը գնաց :
14 Ու մէկ տարուան մէջ Սողոմոնին
եկած ոսկիին կշիռքը՝ վեց հարիւր
վաթսունուվեց տաղանդ ոսկի էր .
15 Առուտուր ընողներէն , ու վաճա-
ռականներէն , և ժ‖Արաբացւոց
բոլոր թագաւորներէն , ու երկրին
նախարարներէն առածէն 'ի զատ :
16 Եւ Սողոմոն թագաւորը կռածոյ
ոսկիէ երկու հարիւր վահան շինեց .
ամէն մէկ վահանին համար վեց
17 հարիւր սիկղ ոսկի գնաց : իԿռա-
ծոյ ոսկիէ իրեք հարիւր ասպար ալ
շինեց . ամէն մէկ ասպարին իրեք
մնաս ոսկի գնաց . ու թագաւորը
լԼիբանանի անտառին տունը դրաւ
զանոնք :
18 խԵւ թագաւորը փղոսկրէ մեծ
աթոռ մը շինեց , ու զուտ ոսկիով
19 պատեց զանիկայ . Աս աթոռը վեց
աստիճան ունէր . ու աթոռին վե-
րի ծայրը ետևէն բոլորշի էր , և նըս-
տելու տեղը մէկ կողմէն ու մէկալ
կողմէն յենարաններ ունէր , ու
յենարաններուն քովը երկու ա-
20 ռիւծներ կը կայնէին : Եւ հոն վեց
աստիճաններուն վրայ՝ մէկ կողմէն
ու մէկալ կողմէն տասուերկու ա-
ռիւծներ կը կայնէին . բոլոր թա-
գաւորութիւններու մէջ ասանկ
բան մը շինուած չէր :
21 ծՈւ Սողոմոն թագաւորին բոլոր
խմելիքի ամանները ոսկի էին . և
Լիբանանի անտառին տանը բոլոր
ամանները զուտ ոսկի էին . արծա-
թէ չկար . ինչու որ արծաթը Սողոմո-
նին օրերը՝ բանի մը տեղ չէր սե-
22 պուեր : Վասն զի թագաւորը ծո-
վու վրայ՝ Քիրամին նաւերուն հետ
կԹարսիսացի նաւեր ունէր . Թար-
սիսացի նաւերը իրեք տարին անգամ
մը՝ ոսկիով , արծաթով , փղոս-
կրով , և կապիկներով , ու սիրա-
մարգներով բեռնաւորուած կու
գային :
23 Եւ հՍողոմոն թագաւորը հա-
րըստութեան ու իմաստութեան
կողմանէ՝ երկրիս բոլոր թագաւոր-
24 ներէն մեծ եղաւ : Ու բոլոր երկիրը
կը փափաքէր Սողոմոնին երեսը
տեսնելու , և անոր իմաստութիւնը
լսելու , որն որ Աստուած անոր սրտին
25 մէջը դրեր էր : Ու անոնց ամէնը
տարուէ տարի իրենց ընծաները կը
բերէին , այսինքն՝ արծաթէ աման-
ներ , ոսկիէ ամաններ , հանդերձ-
ներ , զէնքեր , խունկեր , ձիեր ու
ջորիներ :
26 ձԵւ Սողոմոն ղկառքեր ու ձիա-
ւորներ ժողվեց , ու անիկայ հազար
չորս հարիւր կառք , ու տասուեր-
կու հազար ձիաւոր ունեցաւ . ու
զանոնք կառքերու քաղաքներուն
մէջը , ու Երուսաղէմի մէջ՝ թա-
27 գաւորին քովը տեղաւորեց : ճԵւ
թագաւորը Երուսաղէմի մէջ՝ ար-
ծաթը քարերու պէս հասարակ բան
մը ըրաւ , ու եղևնափայտը շատու-
թենէն՝ դաշտի մէջ եղող մոլա-
28 թզենիներուն պէս ըրաւ : մԵւ
Սողոմոնին ձիերը Եգիպտոսէն կու
գային . ու թագաւորին վաճա-
ռականներուն կարաւանը մէկ որո-
շուած գնով մը ձիերու երամակներ
29 ծախու կ'առնէին : Ու Եգիպտոսէն

* Կամ՝ ժողովը ,
ա Ա Մն. ԻԶ. 16 :
† Կամ՝ Տէրոջը տանը մէջ բռած ողջակէզները
բ Առակ. Ը. 34 :
գ Գլ. Ե. 7 :
դ Բ Թագ. Ը. 15 : Սաղ. ՀԲ. 2 : Առակ. Ը. 15 :
ե Սաղ. ՀԲ. 10, 15 :
զ Գլ. Թ. 27 :
է Բ Մն. Բ. 8 : Թ. 10, 11 :
ը Բ Մն. Թ. 11 :
թ Բ Մն. Թ. 10 :
‡ Եբր. ձեռքին համեմատ
ժ Բ Մն. Թ. 24 : Սաղ. ՀԲ. 10 :
‖ Կամ՝ խառնիճաղանճ ժողովուրդներուն
ի Գլ. ԺԴ. 26 :
լ Գլ. Է. 2 :
խ Բ Մն. Թ. 17, ևն :
ծ Բ Մն. Թ. 20, ևն :
կ Ծն. Ժ. 4 : Բ Մն. Ի. 36 :
հ Գլ. Գ. 12, 13 : Դ. 30 :
ձ Գլ. Դ. 26 : Բ Մն. Ա. 14 : Թ. 25 :
ղ Բ Օր. ԺԷ. 16 :
ճ Բ Մն. Ա. 15—17 :
մ Բ Օր. ԺԷ. 16 : Բ Մն. Ա. 16 : Թ. 28 :

Ն. Ք. ԶՔ. Իրր 992

ձ Յես. Ա. 4 ։ Դ Թագ. Է. 6 ։

մէկ կառք մը դուրս ելլելուն՝ վեց
հարիւր արծաթով վեր կու գար,
ու մէկ ձին հարիւր յիսուն արծա-
թով. ու Քետացւոց բոլոր թա-
գաւորներուն համար, և Ասորւոց
թագաւորներուն համար ալ՝ անոնց
ձեռքովը այնպէս կը հանէին ։

## ԳԼ. ԺԱ

1 Սողոմոնին կնիկները ու հարճերը 4 անոր ծերութեան ատենը՝ զանիկայ կռապաշտութեան կը դարձնեն ։ 9 Աստուած սպառնալիքներ կ'ընէ անոր ։ 14 Սողոմոնին հակառակորդները. Ադադը՝ որ Եգիպտոսի մէջ իբրև հիւր ընդունուած էր. 23 ու Ռազոնը՝ որ Դամասկոսի մէջ կը թագաւորէր ։ 26 և Յերոբովամը՝ որուն համար Աքիան մարգարէացաւ ։ 41 Սողոմոնին գործքերը, իր թագաւորութեանը օրերը. ու մահը ։ Ռոբովամ անոր տեղը կը յաջորդէ ։

ա Նեեմ. ԺԳ. 26 ։ բ Բ Օր. ԺԷ. 17 ։

1 Իսկ ա Սողոմոն թագաւորը՝ Փարա-
ւոնին աղջիկէն ՚ի զատ բ շատ օ-
տարազգի կնիկներ, այսինքն Մո-
վաբացի. Ամմոնացի. Եդովմայե-
ցի, Սիդոնացի, ու Քետացի կը-
2 նիկներ սիրեց. Այն ազգերէն՝ որոնց
համար Տէրը Իսրայէլի որդւոցը ը-
սեր էր. գ Անոնց քովը մի մտնէք,
ու անոնք ալ ձեր քովը չմտնեն,
որ ձեր սիրտերը իրենց աստուած-
ներուն չդարձընեն, Սողոմոն սի-
3 րով անոնց յարեցաւ ։ Եւ անի-
կայ եօթը հարիւր իշխանազուն
կնիկ. ու իրեք հարիւր հարճ ու-
նէր. ու անոր կնիկները անոր սիր-
4 տը խոտորցուցին ։ Եւ Սողոմո-
նին ծերութեան ժամանակը դ ա-
նոր կնիկները անոր սիրտը՝ օտար
աստուածներու դարձուցին, ու ե ա-
նոր սիրտը իր Տէր Աստուծոյն հետ՝
զ իր հօրը Դաւիթին սրտին պէս
5 կատարեալ չէր ։ Եւ Սողոմոն՝ Սի-
դոնացւոց աստուծոյն է Աստարով-
թին ետևէն, ու Ամմոնացւոց գար-
6 շելի ը Մելքոմին ետևէն գնաց ։ Եւ
Սողոմոն՝ Տէրոջը առջևը չարու-
թիւն ըրաւ, ու թ Տէրոջը ետևէն՝
իր հօրը Դաւիթին պէս կատարեալ
7 սրտով չգնաց ։ Այն ատենը Սողո-
մոն՝ ժ Երուսաղէմին դիմացը եղող
լեռանը վրայ ի Մովաբացւոց գար-
շելի Քամովսին համար լ բարձր տեղ
մը շինեց, ու Ամմոնացւոց գարշելի
8 Մողոքին համար ալ ։ Եւ իր բոլոր
օտարազգի կնիկներուն համար ալ
այնպէս ըրաւ, որոնք իրենց աս-
տուածներուն խունկ կը ծխէին ու
զոհ կը մատուցանէին ։
9 Եւ Տէրը Սողոմոնին բարկացաւ,
վասն զի անիկայ խ իր սիրտը խոտոր-
ցուց Իսրայէլի Տէր Աստուծմէն,
ծ ան որ երկու անգամ իրեն երև-
10 ցաւ, Ու կ աս բանիս համար պա-
տուիրեց որ ուրիշ աստուածներու
ետևէ չերթայ. բայց անիկայ Տէ-
11 րոջը պատուէրը չպահեց ։ Եւ Տէրը
Սողոմոնին ըսաւ. Որովհետև * դուն
ասանկ ըրիր, և իմ ուխտս ու քեզի
պատուիրած կանոններս չպահեցիր,
հ ասոր համար թագաւորութիւնդ անշուշտ
քեզմէ պիտի պատռեմ, ու զանի-
կայ քու ծառայիդ պիտի տամ ։
12 Միայն թէ աս բանը քու օրերուդ
մէջը չեմ ըներ, քու հօրդ Դաւի-
թին համար. հապա զանիկայ քու
որդւոյդ ձեռքէն պիտի պատռեմ.
13 ձ Սակայն բոլոր թագաւորութիւնը
պիտի չպատռեմ. հապա իմ ծա-
ռայիս Դաւիթին համար, ու ղ իմ
ընտրած Երուսաղէմիս համար ճ քու
որդւոյդ մէկ ցեղ մը պիտի տամ ։
14 Եւ Տէրը մ Սողոմոնին դէմ մէկ
թշնամի մը հանեց, այսինքն Եդով-
մի թագաւորին սերունդէն Եդով-
15 մայեցի Ադադը. յ Վասն զի Դաւիթ
Եդովմի մէջ եղած ատենը, երբոր
Յովաբ զօրագլուխը մեռցուածները
թաղելու համար ելաւ, ն ու Եդով-
մի մէջ բոլոր արուները մեռցուց.
16 (Որովհետև Յովաբ բոլոր Իսրա-
յէլին հետ՝ հոն վեց ամիս նստաւ,
մինչև որ Եդովմայեցւոց բոլոր ա-
17 րուները մեռցուց.) Այն ատենը Ա-
դադ իր հօրը քանի մը Եդովմայեցի
ծառաներուն հետ փախաւ որ Ե-
գիպտոս երթայ. ու Ադադ պզ-
18 տիկ տղայ էր ։ Եւ անոնք Մա-
դիամէն ելան՝ ու Փառան եկան, և
Փառանէն իրենց հետ մարդիկներ
առին, ու Եգիպտոս եկան Եգիպ-
տոսի Փարաւոն թագաւորին, որ
անոր տուն տուաւ, ու անոր ռոճիկ
կապեց, ու անոր երկիր տուաւ ։
19 Եւ Ադադ՝ Փարաւոնին առջևը շատ
շնորհք գտաւ. ու Փարաւոն իր
կնկանը քոյրը՝ Թահփենէս թա-
գուհիին քոյրը՝ անոր կնիկ տուաւ ։
20 Եւ Թահփենեսին քոյրը Ադադին
որդի մը ծնաւ, որ Գանեբաթ կո-
չուեցաւ. ու Թահփենէս զանիկայ
Փարաւոնին տանը մէջ մեծցուց.
ու Գանեբաթ՝ Փարաւոնին տունը՝
Փարաւոնին որդւոցը մէջն էր ։
21 շ Ու երբոր Ադադ Եգիպտոսի մէջ
լսեց թէ, Դաւիթ իր հայրերուն
հետ քնացեր է, ու Յովաբ զօրա-
պետը մեռեր է, Ադադ՝ Փարաւոնին
ըսաւ. Արձակէ զիս, որ իմ երկիրս
22 երթամ ։ Եւ Փարաւոն անոր ը-
սաւ. Իմ քովս քու ի՞նչդ պակաս
է, որ քու երկիրդ երթալ կ'ուզես ։
Ու անիկայ ըսաւ. Ոչ, բանի մը կա-
րօտութիւն չունիմ, բայց անպատ-
ճառ արձակէ զիս ։
23 Եւ Աստուած անոր դէմ մէկ
ուրիշ թշնամի մը հանեց, այսինքն
Եղիադայի որդին Ռազոնը, որ իր
տիրոջը՝ ո Սուբայի Ադրազար թա-

Իրր 984

դ Բ Օր. ԺԷ. 17 ։ Նեեմ. ԺԳ. 26 ։
ե Գլ. Ը. 61 ։
զ Գլ. Թ. 4 ։
է Հմր 33 ։ Դատ. Բ. 13 ։ Դ Թագ. ԻԳ. 13 ։
ը Հմր 7 Մելքոմ Մողոք ։
թ Տես Թուոց. ԺԴ. 24 ։
ժ Դ Թագ. ԻԳ. 13 ։
ի Թուոց. ԻԱ. 29 ։ Դատ. ԺԱ. 24 ։
լ Թուոց. ԼԳ. 52 ։
խ Տես Հմր 2, 3 ։
ծ Գլ. Գ. 5 ։ Թ. 2 ։
կ Գլ. Զ. 12 ։ Թ. 6 ։

Ն. Ք. ԶՔ. Իրր 984

* Եբր. ասիկայ քու քովդ եղաւ ։
հ Հմր 31 ։ Գլ. ԺԲ. 15, 16 ։
ձ Բ Թագ. Է. 15 ։ Սաղ. ՁԹ. 33 ։
ղ Բ Օր. ԺԲ. 11 ։
ճ Գլ. ԺԲ. 20 ։
մ Ա Մն. Ե. 26 ։
յ Բ Թագ. Ը. 14 ։ Ա Մն. ԺԸ. 12, 13 ։
ն Թուոց. ԻԴ. 19 ։ Բ Օր. Ի. 13 ։
շ Գ Թագ. Ը. 10, 34 ։
ո Բ Թագ. Ը. 3 ։

Ն. Ք. Զ. Ք.
Իւր 984

Նր Թագ. Ը. 3, Ժ. Տ. 18

24 զաւորին քովէն փախեր էր ։ Ու
անիկայ իր քովը մարդիկներ ժող֊
վեց, և դնդապետ եղաւ. Նու երբ֊
որ Դաւիթ զանոնք կոտրեց, Դա֊
մասկոս գացին ու հոն բնակեցան.
ու Դամասկոսի մէջ թագաւորու֊
25 թիւն ըրին ։ Ուստի Ռոզոն՝ Սողո֊
մոնին բոլոր օրերուն մէջ՝ Իսրայէ֊
լին թշնամի եղաւ, Ադադին ըրած
չարութենէն 'ի զատ. ու Իսրայէլին
նեղութիւն կու տար, և Ասորւոց
վրայ կը թագաւորէր ։

Դ Գլ. ԺԲ. 2, Բ Մն. ԺԳ. 6
Հր Թագ. Ի. 21
Ե Գլ. Թ. 24

26 Եւ Սողոմոնին ծառան՝ Սարե֊
դայէն Եփրաթացի Նաբատի որ֊
դին Յերոբովամն ալ, որուն մայրը
որբևարի կնիկ մըն էր Սարուա ա֊
նունով, Թագաւորին դէմ ձեռք
27 վերցուց ։ Ու թագաւորին դէմ
ձեռք վերցնելուն պատճառը աս
էր. Երբոր Սողոմոն Մելոնը շի֊
նեց, և իր հօրը Դաւիթին քաղա֊
28 քին փլած տեղը գոցեց, Յերոբո֊
վամ խիստ ուժով մարդ մը ըլլա֊
լով, ու Սողոմոն տեսնելով որ
անիկայ գործունեայ կտրիճ մըն է,
զանիկայ Յովսեփի տանը բոլոր

Իւր 980
Զ Գլ. ԺԴ. 2

29 բեռներուն վրայ դրաւ ։ Եւ եղաւ
որ ան ժամանակը Յերոբովամ Ե֊
րուսաղէմէն դուրս ելաւ. ու ճամ֊
բուն մէջ Սիլոնացի Աքիա մար֊
գարէն անոր հանդիպեցաւ. և ա֊
նիկայ նոր վերարկու մը հագեր էր.
ու դաշտին մէջը երկուքնին մինակ
30 էին ։ Եւ Աքիա անոր վրայի նոր
վերարկուն բռնեց, ու զանիկայ
տասուերկու կտոր պատռեց ։

Է Տես ա Թագ. ԺԵ. 27, Իդ. 5
Ը Հմր. 11, 13

31 Եւ Յերոբովամին ըսաւ. Տասը
կտորը քեզի՛ առ. քանզի Իսրա֊
յէլին Տէր Աստուածը այսպէս կ'ը֊
սէ. Ահա Սողոմոնին ձեռքէն թա֊
գաւորութիւնը պիտի պատռեմ,
ու տասը ցեղը քեզի պիտի տամ ։
32 Եւ իմ ծառայիս Դաւիթին հա֊
մար՝ ու Իսրայէլին բոլոր ցեղերէն
ընտրած Երուսաղէմ քաղաքիս հա֊
մար՝ մէկ ցեղ մը անոր ըլլայ.

Ը Հմր 5, 6, 7

33 Որովհետև զիս թողուցին, ու
Սիդոնացւոց աստուծոյն Աստա֊
րովթին, և Մովաբացւոց աստու֊
ծոյն Քամովսին, ու Ամմոնի որ֊
դւոցը աստուծոյն Մելքոմին եր֊
կրպագութիւն ըրին, և իմ ճամ֊
բաներուս մէջը չքալեցին, որ իր
հօրը Դաւիթին պէս՝ իմ առջևս
ուղիղ եղածը, ու իմ կանոններս
ու դատաստաններս 'ի գործ դնէն ։
34 Սակայն անոր ձեռքէն բոլոր թա֊
գաւորութիւնը պիտի չառնեմ, ու
զանիկայ իր կենացը բոլոր օրերուն
մէջ իշխան պիտի թողում, իմ
պատուիրանքներս ու կանոններս
պահող իմ ընտրած ծառայիս Դա֊

Թ Գլ. ԺԲ. 16, 17

35 ւիթին համար ։ Բայց անոր որ֊
դւոյն ձեռքէն թագաւորութիւնը
պիտի առնեմ, ու տասը ցեղը քեզի
36 պիտի տամ ։ Եւ անոր որդւոյն մէկ
ցեղ մը պիտի տամ, որ իմ ծա֊
ռաս Դաւիթը իմ առջևս միշտ մէկ
ճրագ մը ունենայ Երուսաղէմ քա֊
ղաքին մէջ՝ որն որ ընտրեցի իմ ա֊
37 նունս հոն դնելու համար ։ Ու քեզ
պիտի առնեմ, և սրտիդ բոլոր
ուզածին պէս թագաւորութիւն
պիտի ընես, ու Իսրայէլի վրայ
38 թագաւոր պիտի ըլլաս ։ Եւ թէ
որ իմ բոլոր քեզի պատուիրածնե֊
րուս հնազանդութիւն ընես, ու իմ
ճամբաներուս մէջը քալես, և իմ
ծառայիս Դաւիթին ըրածին պէս՝
իմ կանոններս ու պատուիրանք֊
ներս պահելով՝ իմ առջևս ուղիղ
եղածը ընես, ան ատենը ես քեզի
հետ պիտի ըլլամ, ու քեզի մնա֊
յուն տուն պիտի շինեմ, ինչպէս
որ Դաւիթին շինեցի, ու Իսրայէլը
39 քեզի պիտի տամ ։ Եւ ասոր հա֊
մար Դաւիթին սերունդը պիտի
40 չարչարեմ, բայց ոչ թէ միշտ ։ Ու
Սողոմոն՝ Յերոբովամը մեռցնել
ուզեց, բայց Յերոբովամ ելաւ
Եգիպտոս փախաւ, Եգիպտոսի
Սիսակ թագաւորին քովը գնաց,
ու մինչև Սողոմոնին մեռնիլը Ե֊
գիպտոս մնաց ։
41 Եւ Սողոմոնին մնացորդ պատ֊
մութիւնը, ու անոր բոլոր ըրած֊
ները, ու անոր իմաստութիւնը,
ահա Սողոմոնին պատմութեանը
42 գրքին մէջ գրուած են ։ Եւ Սո֊
ղոմոնին Երուսաղէմի մէջ բոլոր
Իսրայէլի վրայ թագաւորութիւն
ըրած օրերը՝ քառասուն տարի ե֊
43 ղաւ ։ Ու Սողոմոն իր հայրերուն
հետ քնացաւ, և իր հօրը Դաւի֊
թին քաղաքին մէջը թաղուեցաւ.
ու անոր որդին Ռոբովամ՝ անոր
տեղը թագաւոր եղաւ ։

Ն. Ք. Զ. Ք.
Իւր 980

Գ Թագ. ԺԵ. 4, Դ Թագ. Ը. 19, Սաղ. ճլբ. 17
Ժ Յես. Ա. 5
Ի Բ Թագ. Է. 11, 27
Ի Բ Մն. Թ. 29
Լ Բ Մն. Թ. 30
Մ Բ Մն. Թ. 31
Իւր 975
Ն Մատ. Ա. 7

## ԳԼ. ԺԲ

1 Իսրայէլացիք Ռոբովամը թագաւոր ընելու համար Սիւքեմի մէջ ժողվուելով՝ Յերոբովամին միջոցովը անկէ կը խնդրեն որ իրենց վրայ դրուած լուծը թեթևցրնէ ։ 6 Ռոբովամ՝ երիտասարդներուն խորհրդովը ծերերուն խորհուրդը մերժելով՝ խստութեամբ կը պատասխանէ անոնց ։ 16 Տասը ցեղերը կ'ապստամբին. ու Ադորամը կը մեռցնեն. ասոր վրայ Ռոբովամ կը փախչի ։ 21 Ռոբովամ բանակ կը կազմէ. բայց Սեմայիային կ'արգիլուի ։ 25 Յերոբովամ իր թագաւորութիւնը զօրացրնելու համար քաղաքներ կը շինէ. 26 ու երկու որթերուն կռապաշտութիւնը կը հաստատէ ։

Ա Բ Մն. Ժ. 1, &c.
Բ Գլ. ԺԱ. 26
Գ Գլ. ԺԱ. 40

1 Եւ Ռոբովամ Սիւքեմ գնաց.
վասն զի բոլոր Իսրայէլը զանի֊
կայ թագաւոր ընելու համար
2 Սիւքեմ գացեր էր ։ Ու Նաբա֊
տեան Յերոբովամը՝ որ Սողոմոն
թագաւորին երեսէն փախած՝ Ե֊
գիպտոս կը բնակէր, դեռ Ե֊

Ն. Ք. ՉՔ. 975

զիպտոսի մէջ էր երբոր աս-
3 իկա լսեց ։ Ու մարդ խըր-
կելով զանիկայ կանչեցին. ու Յե-
րոբովամը և Իսրայէլի բոլոր ժողով-
քը եկան, ու Ռոբովամին հետ խօ-
4 սեցան ու ըսին. Քու հայրդ մեր
վրայ ծանր լուծ մը դրաւ. դուն
հիմա քու հօրդ խիստ ծառայու-
թիւնը, ու մեր վրայ դրած ծանր
լուծը թեթեւցուր, ու քեզի ծա-
5 ռայութիւն ընենք ։ Ու անիկայ
ըսաւ անոնց. Գացէ՛ք՝ ու իրեք օ-
րէն ետքը ինծի դարձէք. ու ժո-
ղովուրդը գնաց ։
6 Ու Ռոբովամ թագաւորը խոր-
հուրդ հարցուց ան ծերերուն՝ որ իր
հօրը Սողոմոնին առջեւը կը կայնէին
երբոր անիկայ ողջ էր, ու ըսաւ.
Դուք ինծի ի՞նչ խորհուրդ կու
տաք, որ աս ժողովուրդին պա-
7 տասխան տամ ։ Ու անոր խօսեցան
ու ըսին. Եթէ որ դուն այսօր աս
ժողովուրդին ծառայ ըլլաս, ու ա-
նոնց ծառայութիւն ընես, և անոնց
բարի խօսքեր ըսելով պատասխան
տաս, ան ատենը անոնք քեզի միշտ
8 ծառայ կ'ըլլան ։ Բայց անիկայ ծե-
րերուն իրեն տուած խորհուրդը
մերժեց, ու իր առջեւը կայնող ու
իր հետը մեծցած երիտասարդներուն
9 խորհուրդ հարցուց. Ու անոնց ը-
սաւ. Դուք ի՞նչ խորհուրդ կու
տաք, որ աս ժողովուրդին պա-
տասխան տամ. քանզի անոնք ինծի
խօսեցան, ու ըսին. Քու հօրդ մեր
10 վրայ դրած լուծը թեթեւցուր ։ Ու
անոր հետ մեծցած երիտասարդնե-
րը անոր խօսեցան ու ըսին. Քու
հայրդ մեր լուծը ծանրացուց, ու
դուն մեր վրայէն թեթեւցուր՝ ըսող
ժողովուրդին այսպէս խօսիս, ու
անոնց այսպէս ըսես. Իմ պզտիկ
մատս՝ իմ հօրս մէջքէն հաստ է.
11 Իմ հայրս ձեր վրայ ծանր լուծ դրեր
է, բայց ես ձեր լուծը աւելի պիտի
ծանրացընեմ. իմ հայրս ձեզ խա-
րազաններով խրատեր է, բայց ես
ձեզ կարիճներով պիտի խրատեմ ։
12 Ու Յերոբովամ ու բոլոր ժողո-
վուրդը երրորդ օրը Ռոբովամին ե-
կան, ինչպէս որ թագաւորը ըսեր
էր թէ՝ Երրորդ օրը ինծի եկէք ։
13 Ու թագաւորը ժողովուրդին խըս-
տութեամբ պատասխան տուաւ,
և ծերերուն իրեն տուած խրատը
14 մերժելով, Երիտասարդներուն խոր-
հուրդին պէս անոնց հետ խօսեցաւ,
ու ըսաւ. Իմ հայրս ձեր լուծը ծան-
րացուցեր է, բայց ես ձեր լուծը
աւելի պիտի ծանրացընեմ. իմ
հայրս ձեզ խարազաններով խրա-
տեր է, բայց ես ձեզ կարիճներով
15 պիտի խրատեմ ։ Ու թագաւորը
ժողովուրդին խօսքը մտիկ չըրաւ.
վասն զի աս բանը Տէրոջմէն եղաւ,
որ Տէրը Սիլոնացի Աքիային ձեռ-
քովը Նաբատեան Յերոբովամին
16 ըսած խօսքը հաստատէ ։ Ու երբոր
բոլոր Իսրայէլը տեսաւ որ թագա-
ւորը իրենց մտիկ չըրաւ, ժողո-
վուրդն ալ թագաւորին պատաս-
խան տուին ու ըսին. Մենք Դա-
ւիթին քովը ի՞նչ բաժին ունինք,
ու Յեսսէի որդւոյն քովը ժառան-
գութիւն չունինք. ո՛վ Իսրայէլ՝
ձեր վրանները դարձէք. ո՛վ Դա-
ւիթ՝ հիմա դուն քու տունդ հոգա.
ու Իսրայէլը իրենց վրանները գա-
17 ցին ։ Բայց Յուդայի քաղաքնե-
րուն մէջ բնակող Իսրայէլի որդւո-
ցը վրայ՝ Ռոբովամը թագաւոր ե-
18 ղաւ ։ Ու Ռոբովամ թագաւորը
հարկերուն վրայ եղող Ա-
դորամը խրկեց, բոլոր Իսրայէլը
զանիկայ քարերով քարկոծեցին,
ու մեռաւ ։ Ու Ռոբովամ թագա-
ւորը արտորալով կառքը հեծաւ,
19 որ Երուսաղէմ փախչի ։ Այսպէս
Իսրայէլը Դաւիթի տունէն ապըս-
տամբեցաւ մինչեւ աս օրս ։
20 Ու բոլոր Իսրայէլը Յերոբովամին
դառնալը լսելով՝ մարդ խրկեցին,
ու զանիկայ ժողովքին մէջը կան-
չեցին, և զանիկայ բոլոր Իսրայէ-
լի վրայ թագաւոր դրին, ու Յու-
դայի ցեղէն 'ի զատ Դաւիթին տա-
21 նը ուրիշ հետեւող մը չկար ։ Ու
Ռոբովամ Երուսաղէմ մտաւ, ու
բոլոր Յուդայի տունէն ու Բենիա-
մինի ցեղէն հարիւր ութսուն հա-
զար ընտիր պատերազմողներ ժող-
վեց, որ Իսրայէլի տանը հետ պա-
տերազմին, ու թագաւորութիւնը
Սողոմոնի որդւոյն Ռոբովամին դար-
ձընեն ։
22 Ու Աստուծոյ մարդուն Սեմա-
յիային՝ Աստուծոյ խօսքը եղաւ՝
23 ըսելով. Սողոմոնի որդւոյն Յու-
դայի Ռոբովամ թագաւորին, ու
բոլոր Յուդայի տանը, ու Բենիամի-
նին, և մնացորդ ժողովուրդին խօ-
24 սէ, ու ըսէ. Տէրը այսպէս կ'ը-
սէ. Մի՛ ելլէք, ու Իսրայէլի որ-
դւոցը՝ ձեր եղբայրներուն հետ մի
պատերազմիք. ամէն մարդ թող
իր տունը դառնայ. վասն զի աս
բանը ինծմէ եղաւ ։ Ու Տէրոջը
խօսքը մտիկ ըրին, ու Տէրոջը ը-
սածին պէս՝ *ետ դարձան ։
25 Ու Յերոբովամ Եփրեմի լեռանը
վրայ Սիւքէմը շինեց, ու հոն բը-
նակեցաւ. և անկէ ելաւ, Փա-
26 նուէլը շինեց ։ Ու Յերոբովամ իր
սրտին մէջը ըսաւ. Հիմա թագա-
ւորութիւնը Դաւիթին տանը պի-
27 տի դառնայ ։ Թէ որ աս ժողո-

Marginal references: Ա. Թագ. Ը. 11—18. Գլ. Դ. 7։ — Բ Մն. Ժ. 7։ Առակ. ԺԵ. 1։ — Ն. Ք. ՉՔ. 975 — Դ Հմր 24։ Դատ. ԺԴ. 4։ Բ Մն. Ժ. 15։ Իր. 7։ ԻԵ. 20։ — Ե Գլ. ԺԱ. 11, 31։ — Զ Բ Թագ. Ի. 1։ — Ը Գլ. ԺԱ. 13, 36։ — Թ Գլ. Դ. 6։ Ե. 14։ — Ժ Դ Թագ. ԺԷ. 21։ — Ի Գլ. ԺԱ. 13, 32։ — Լ Բ Մն. ԺԱ. 1։ — Խ Բ Մն. ԺԱ. 2։ — Ծ Հմր 15։ — * Կամ՝ երթալէն — Կ Տես Դատ. Թ. 45։ — Հ Դատ. Ը. 17։

Ն. Ք. ԶՔ. 975

ՂԲ Օր. ԺԲ. 5, 6.
Ճ Դ Թագ. Ժ. 29 ; ԺԵ. 16.
* Կամ՝ Ալ հերիք է ձեր Երուսաղէմ ելլելը.
Ր Ել. ԼԲ. 4, 8.
Յ Ծն. ԻԸ. 19 ; Ովս. Դ. 15.
Ն Դատ. ԺԸ. 29.
Շ Գլ. ԺԳ. 34 ; Դ Թագ. ԺԼ. 21.
Ո Գլ. ԺԳ. 32.
Չ Թուոց. Գ. 10 ; Գլ. ԺԳ. 33 ; Դ Թագ. ԺԷ. 32 ; Բ Մն. ԺԱ. 14, 15 ; Եզեկ. ԽԴ. 7, 8.
Պ Ղև. ԻԳ. 33, 34 ; Թուոց. ԻԹ. 12 ; Գլ. Ը. 2, 5.
† Կամ՝ ելաւ.
Ջ Ամով. Է. 13.
Ռ Թուոց. ԺԵ. 39.
‡ Կամ՝ խունկ ծխելու ելաւ.
Ս Գլ. ԺԳ. 1.

Ս Գլ. ԺԲ. 32, 33.
Բ Դ Թագ. ԻԳ. 17.
Գ Դ Թագ. ԻԳ. 15, 16.

վուրդը Երուսաղէմ Ղ Տէրոջը տու-
նը ելլէ զոհ ընելու համար, ան ա-
տենը աս ժողովուրդին սիրտը ի-
րենց տիրոջը Յուդայի Ռոբովամ
թագաւորին պիտի դառնայ, և զիս
պիտի մեռցընեն, ու Յուդայի Ռո-
բովամ թագաւորին պիտի դառ-
28 նան ։ Եւ թագաւորը խորհուրդ
ըրաւ, ու Ճ երկու հատ ոսկիէ որթ
շինեց. ու անոնց ըսաւ. *Ասկէ
ետև ձեզի Երուսաղէմ ելլել պէտք
չէ". ով Իսրայէլ, Ր ահա քու աս-
տուածներդ՝ որ քեզ Եգիպտոսի
29 երկրէն հանեցին ։ Ու մէկը Յ Բեթելի
մէջ դրաւ, ու մէկալն ալ Ն Դանի
30 մէջ դրաւ ։ Եւ աս բանը Շ մեղքի
պատճառ եղաւ. վասն զի ժողո-
վուրդը մինչև Դան կ'երթար ու որ-
բէլոյն մէկուն առջևը երկրպագու-
31 թիւն ընելու համար ։ Ու Ո բարձր
տեղերու վրայ կռատուններ շինեց.
և Չ ժողովուրդին ցած մարդիկնե-
րէն քուրմեր ըրաւ, որոնք Ղևիի
որդւոցմէ չէին ։
32 Ու Յերոբովամ ութերորդ ամ-
սուն մէջ՝ ամսուն տասնուհինգե-
րորդ օրը, Պ Յուդայի մէջ եղածին
տօնին պէս տօն սահմանեց, ու
սեղանին վրայ † զոհեր մատուց".
Բեթելի մէջ այսպէս ըրաւ, ու իր
շինած որթերուն զոհեր մատուց.
և բարձր տեղերուն համար ըրած
Ջ քուրմերը Բեթելի մէջ դրաւ ։
33 Ու Ռ իր մտքէն հնարած ամսուն մէջ՝
այսինքն ութերորդ ամսուն տասն-
ուհինգերորդ օրը՝ Բեթելի մէջ
իր շինած սեղանին վրայ զոհեր մա-
տուց, ու Իսրայէլի որդւոցը տօն
սահմանեց, ու սեղանին վրայ ‡ զո-
հեր մատուցանելով՝ Ս խունկ ծը-
խեց" ։

ԳԼ. ԺԳ

1 Յերոբովամին ձեռքը կը չորնայ, Բեթելի մէջ իր շինած սեղանին վրայով մարգարէութիւն ընողին դէմ չարութիւն մտածելուն համար, 6 և մարգարէին աղօթքովը կը բժշկուի ։ 7 Ան մարգարէն թագաւորին ընելու պատիւը մերժելով՝ Բեթելէն կ'երթայ ։ 11 Մէկ ծեր մարգարէ մը խաբելով՝ ետ կը դարձընէ զանիկայ, 20 որ Աստուծմէ կը յանդիմանուի, 23 ու առիւծէ մը կը մեռցուի. 26 ու ծեր մարգարէն զանիկայ կը թաղէ, 31 և անոր մարգարէութիւնը կը հաստատէ ։ 33 Յերոբովամին կամակորութիւնը ։

1 Ու Ս երբոր Յերոբովամ խունկ ծը-
խելու համար սեղանին քովը կը
կայնէր, ահա Բ Աստուծոյ մարդ մը
Տէրոջը խօսքովը Յուդայէն Բեթել
2 եկաւ ։ Եւ Տէրոջը խօսքովը սեղա-
նին կանչեց ու ըսաւ. Ո՛վ սեղան,
ո՛վ սեղան, Տէրը այսպէս կ'ըսէ.
Ահա Դաւիթին տանը որդի մը պի-
տի ծնանի Գ Յովսիա անունով,
և քու վրադ խունկ ծխող բարձր
տեղերուն քուրմերը՝ քու վրադ
պիտի զոհէ, ու քու վրադ մարդոց
3 ոսկորներ պիտի այրեն ։ Եւ նոյն
օրը Դ նշան մը տալով՝ ըսաւ. Տէ-
րոջը խօսելուն նշանը աս է. ահա
սեղանը պիտի պատռի ու վրայի
մոխիրը պիտի թափի.
4 Ու երբոր թագաւորը Աստուծոյ
մարդուն Բեթելի մէջ սեղանին
համար կանչած խօսքը լսեց, Յերո-
բովամ սեղանին վրայէն ձեռքը
երկընցուց, ու ըսաւ. Աս մարդը
բռնեցէք. և անոր վրայ երկընցու-
ցած ձեռքը չորցաւ, ու զանիկայ
իրեն դարձընելու կարող չեղաւ ։
5 Եւ Աստուծոյ մարդուն Տէրոջը
խօսքովը տուած նշանին պէս՝ սե-
ղանը պատռեցաւ, ու մոխիրը սե-
6 ղանէն թափեցաւ ։ Եւ թագա-
ւորը Աստուծոյ մարդուն պատաս-
խան տուաւ ու ըսաւ. Ե Քու Տէր
Աստուծոյդ առջևը աղաչէ, ու ին-
ծի համար աղօթք ըրէ, որ ձեռքս
ինծի դառնայ ։ Ան ատենը Աստու-
ծոյ մարդը Տէրոջը առջևը աղա-
չեց. և թագաւորին ձեռքը իրեն
դարձաւ, ու առջինին պէս եղաւ ։
7 Եւ թագաւորը Աստուծոյ մարդուն
ըսաւ. Ինծի հետ տուն եկուր, և
‖ քիչ մը կերակուր կեր", ու Զ քե-
8 զի պարգև տամ ։ Եւ Աստուծոյ
մարդը թագաւորին ըսաւ. Է Թէ
որ ինծի քու տանդ կէսն ալ տաս,
քեզի հետ պիտի չերթամ, ու աս
տեղս հաց պիտի չուտեմ, ոչ ալ
9 ջուր խմեմ. Վասն զի Տէրը իր
խօսքովը ինծի այսպէս պատուիրեց
ու ըսաւ. Ը Հաց չուտես, ու ջուր
չխմես, ու գացած ճամբայէդ
10 չդառնաս ։ Ուստի անիկայ ուրիշ
ճամբով գնաց, ու Բեթէլ գացած
ճամբովը չդարձաւ ։
11 Եւ Բեթելի մէջ ծեր մարգարէ
մը կը բնակէր. ու անոր որդիքը
եկան, ու Աստուծոյ մարդուն նոյն
օրը Բեթելի մէջ բոլոր ըրած գործ-
քերը անոր պատմեցին, և անիկայ
թագաւորին ինչ խօսքեր որ զրու-
ցեր էր, զանոնք ալ իրենց հօրը
12 պատմեցին ։ Ու անոնց հայրը ա-
նոնց ըսաւ. Ո՞ր ճամբայէն գնաց ։
Եւ անոր որդիքը Յուդայէն եկող
Աստուծոյ մարդուն գացած ճամ-
13 բան § ցուցուցին ։ Ու իր որդւոցը
ըսաւ. Էշը պատրաստեցէք ինծի. և
անոնք անոր համար էշը պատրաս-
տեցին, ու անիկայ վրան հեծաւ.
14 Եւ Աստուծոյ մարդուն ետևէն գը-
նաց, ու զանիկայ բևեկնիի մը տակ
նստած գտաւ, ու անոր ըսաւ.
Յուդայէն եկող Աստուծոյ մարդը
դո՞ւն ես. և անիկայ ըսաւ. Ես
15 եմ ։ Ու անոր ըսաւ. Ինծի հետ
16 տուն եկուր, ու հա՛ց կեր ։ Եւ ա-

Ն. Ք. ԶՔ. 975

Դ Ես. Է. 14 ; Յով. Բ. 18 ; Ա Կոր. Ա. 22.
Ե Ել. Ը. 8 ; Թ. 28 ; Ժ. 17 ; Թուոց. ԻԱ. 7 ; Գործ. Ը. 24 ; Յակ. Ե. 16.
‖ Եբր. սիրտդ զօրացուր.
Զ Ա Թագ. Թ. 7 ; Դ Թագ. Ե. 15.
Է Թուոց. ԻԲ. 18 ; ԻԴ. 13.
Ը Ա Կոր. Ե. 11.
§ Կամ՝ տեսեր էին.

> Ն. ք. զ. Ք. 975

նիկայ ըսաւ. Ոչ քեզի հետ չեմ կրը-
նար դառնալ ու քու տունդ մըտ-
նել. ոչ ալ աս տեղս քեզի հետ

> ը Հմր Տ. 9.

հաց պիտի ուտեմ, ու ոչ ջուր
17 խմեմ. Վասն զի ժ Տէրոջը խօսքովը

> ժ Գլ. Ի. 35. ա Թգս. Դ. 15.

ինծի ըսուեցաւ. Հոն հաց չուտես,
ջուր ալ չխմես, ու գացած ճամ-
18 բայէդ չդառնաս։ Բայց անիկայ
ըսաւ անոր. Ես ալ քեզի պէս
մարգարէ եմ, ու մէկ հրեշտակ մը
ինծի հետ Տէրոջը խօսքովը խօսե-
ցաւ ու ըսաւ. Զանիկայ քեզի հետ
քու տունդ դարձուր՝ որ հաց
ուտէ, ու ջուր խմէ։ Սակայն
սուտ զրուցեց անոր։
19 Ան ատենը անոր հետը դարձաւ,
և անոր տունը հաց կերաւ, ու ջուր
20 խմեց։ Ու երբոր անոնք սեղանը
նստեր էին, Տէրոջը խօսքը զանի-
կայ դարձընող մարգարէին եղաւ.
21 Ու անիկայ Յուդայէն եկող Աս-
տուծոյ մարդուն կանչելով՝ ըսաւ.
Տէրը այսպէս կ'ըսէ. Որովհետև
դուն Տէրոջը խօսքին անհնազան-
դութիւն ըրիր, ու քու Տէր Աս-
տուծոյդ քեզի պատուիրած պա-
22 տուէրը չպահեցիր, Եւ դարձար,

> է Հմր 9.

ու հաց կերար ու ջուր խմեցիր է ան
տեղը՝ որուն համար քեզի ըսած էր
որ հաց չուտես ու ջուր չխմե՛ս,
քու մեռելդ քու հայրերուդ գերեզ-
մանը պիտի չմտնէ։
23 Եւ հաց ուտելէն ու ջուր խմելէն
ետքը՝ անիկայ իր ետ դարձուցած
24 մարգարէին էշը պատրաստեց. Ան

> ւ Գլ. Ի. 36.

ալ գնաց. ու ճամբուն մէջ ւ մէկ
առիւծ մը գտաւ զանիկայ ու մեռ-
ցուց. և անոր մեռելը ճամբուն
վրայ փռուած մնաց. ու էշը անոր
քովը կայներ էր, առիւծն ալ մե-
25 ռելին քովը կայներ էր։ Եւ ահա
անկէ քանի մը մարդիկ անցնելով՝
ճամբուն վրայ փռուած մեռելը ու
մեռելին քովը կայնող առիւծը տե-
սան. ու գացին ան ծեր մարգա-
րէին բնակած քաղաքին մէջը
26 պատմեցին։ Եւ զանիկայ ճամբա-
յէն դարձընող մարգարէն երբոր
լսեց, ըսաւ. Անիկայ Տէրոջը խօս-
քին անհնազանդութիւն ընող՝ Աս-
տուծոյ մարդն է. ու Տէրը զանի-
կայ առիւծին տուեր է, որ զանի-
կայ պատառելով մեռցուցեր է,
Տէրոջը անոր ըսած խօսքին հա-
27 մեմատ։ Եւ իր որդւոցը խօսե-
ցաւ ու ըսաւ. Ինծի համար էշը
պատրաստեցէք. ու անոնք պատ-
28 րաստեցին։ Եւ գնաց անոր մե-
ռելը գտաւ, որ ճամբուն վրայ
փռուած էր. ու էշը ու ա-
ռիւծը մեռելին քովը կայներ է-
ին. առիւծը մեռելը կերած չէր,
29 ոչ ալ էշը պատառեր էր։ Եւ

> Ն. ք. զ. Ք. 975

ան մարգարէն Աստուծոյ մար-
դուն մեռելը վերցուց, ու զանի-
կայ իշուն վրայ դրաւ, ու զանի-
կայ դարձուց. և ծեր մարգա-
րէն քաղաքը մտաւ, որ լալով զա-
30 նիկայ թաղէ. Եւ անոր մեռելը իր
գերեզմանին մէջը դրաւ. ու ը Վա՜յ

> ը Երեմ. իբ. 18.

եղբայր ըսելով, անոր վրայ լացին։
31 Ու զանիկայ թաղելէն ետքը՝ իր որ-
դւոցը խօսեցաւ ու ըսաւ. Երբոր
ես մեռնիմ, զիս Աստուծոյ մար-
դուն թաղուած գերեզմանին մէջը
թաղեցէք. թ իմ ոսկորներս անոր ոս-

> թ Դ Թագ. իգ. 17. 18.

32 կորներուն քովը դրէք. Վասն զի
Բեթելի մէջ եղող սեղանին համար,
ու ի Սամարիայի քաղաքներուն մէջ

> ի Տես Գլ. ժզ. 24.

եղող ամէն բարձր տեղերու կռա-
տուններուն համար՝ կ անոր Տէրոջը

> կ Հմր 2. Դ Թագ. իգ. 16. 19.

խօսքովը կանչած խօսքը անպատ-
ճառ պիտի կատարուի։
33 Լ Աս բանէն ետքը Յերոբովամ իր

> լ Գլ. ժբ. 31. 32. Բ Մն. ժա. 15. ժգ. 9.
> Իբր 974

չար ճամբայէն չդարձաւ. մանա-
ւանդ նորէն ժողովուրդին ցած մար-
դիկներէն բարձր տեղերուն ղքուր-

> ղ Դատ. ժէ. 12.

մեր կ'ընէր. ամէն ուզողը կ'օրհնէր.
ու անիկայ բարձր տեղերուն քուրմ
34 կ'ըլլար։ մ Եւ աս բանը Յերոբո-

> մ Գլ. ժբ. 30.

վամին տանը մեղքի պատճառ եղաւ,
նաև ն անոր երկրիս երեսէն կորսուե-

> ն Գլ. ժդ. 10.

լուն ու բնաջինջ ըլլալուն։

## ԳԼ. ԺԴ

1 Յերոբովամ իր որդւոյն Աբիային հիւանդանալուն համար՝ իր կնկանը հագուստը փոխել կու տայ, ու զանիկայ ընծաներով Սելով կը խրկէ Աքիա մարգարէին։ 5 Աքիա Աստուծոյ յայտնութեամբը Աստուծոյ դատաստանը կը ցուցընէ անոր։ 17 Աբիա կը մեռնի ու կը թաղուի։ 19 Նադաբ՝ Յերոբովամին յաջորդը կ'ըլլայ։ 21 Ռոբովամին չար վարմունքը։ 25 Սիսակ Երուսաղէմը կը կողոպտէ։ 29 Աբիա՝ Ռոբովամին յաջորդը կ'ըլլայ։

1 Ան ատենը Յերոբովամին՝ որդին

> 956

2 Աբիան հիւանդացաւ։ Ու Յե-
րոբովամ իր կնկանը ըսաւ. Ելի՛ր,
կերպարանքդ փոխէ՛, այնպէս որ
Յերոբովամին կնիկը ըլլալդ չգիտ-
ցուի, ու Սելով գնա. ահա Աքիա
մարգարէն հոն է. անիկայ է՛ որ
ինծի համար ըսաւ թէ ա աս ժողո-

> ա Գլ. ժա. 31.

վուրդին վրայ թագաւոր պիտի ըլ-
3 լամ. բ Ու ձեռքդ տասը հաց, և

> բ Ա Թագ. թ. 7. 8.

բլիթներ, ու մէկ սափոր մեղր առ,
ու անոր գնա. անիկայ քեզի պիտի
պատմէ ինչ որ տղուն պիտի պա-
4 տահի։ Եւ Յերոբովամին կնիկը
այնպէս ըրաւ. ու ելաւ գ Սելով գը-

> գ Գլ. ժա. 29.

նաց, և Աքիային տունը մտաւ.
բայց Աքիային աչքերը ծերութե-
նէն տկարացեր էին, ու չէր կրնար
տեսնել։
5 Եւ Տէրը Աքիային ըսաւ. Ահա
Յերոբովամին կնիկը՝ իր տղուն հա-
մար քեզի բան հարցընելու կու գայ.

Ն. Ք. ՆՔ. 956

վասն զի անիկայ հիւանդ է . անոր
այսպէս ու այսպէս խօսիս . ու ա-
նիկայ գալու ատենը անծանօթ
6 կերպարանքով պիտի գայ ։ Ու երբոր
անիկայ դռնէն ներս կը մտնէր , Ա-
քիա անոր ոտքերուն ձայնը լսածին
պէս , ըսաւ . Ով Յերոբովամին
կնիկը՝ եկուր , դուն ինչո՞ւ ատանկ
անծանօթ կերպարանք մտեր ես .
բայց ես քեզի խիստ լուր մը պիտի
7 խրկուեցայ ։ Գնա , Յերոբովամին
ըսէ . Իսրայէլին Տէր Աստուածը
այսպէս կ'ըսէ . Որովհետեւ քեզ
ժողովուրդին մէջէն բարձրացուցի ,
ու քեզ իմ ժողովուրդիս Իսրայէլին
8 վրայ իշխան ըրի , Եւ թագաւո-
րութիւնը Դաւիթին տունէն
պատռեցի , ու զանիկայ քեզի
տուի . ու դուն՝ իմ պատուի-
րանքներս պահող , ու իմ առջեւս
ուղղութիւն ընելու համար իր բո-
լոր սրտովը ինծի հնազանդ եղող
իմ Դաւիթ ծառայիս պէս չեղար .
9 Մանաւանդ բոլոր քեզմէ առաջ
եղողներէն աւելի չարութիւն ըրիր ,
ու զիս բարկացընելու համար՝ գա-
ցիր քեզի ուրիշ աստուածներ ու
ձուլածոյ կուռքեր շինեցիր , ու
10 զիս ետիդ նետեցիր . Ասոր համար
ահա Յերոբովամին տանը վրայ
չարիք պիտի բերեմ , ու Յերոբո-
վամին ամէն երիկմարդիկները
Իսրայէլի մէջ գոցուածը ու
ձգուածը պիտի կոտորեմ , և Յե-
րոբովամին տունը պիտի աւլեմ ,
ինչպէս որ աղբը կ'աւլեն , մինչեւ որ
11 հատնի ։ Յերոբովամէն քաղաքի
մէջ մեռնողը՝ շուները պիտի ու-
տեն , ու դաշտի մէջ մեռնողը՝ եր-
կինքի թռչունները պիտի ուտեն .
12 քանզի Տէրը խօսեցաւ ։ Եւ դուն
ելի՛ր , քու տունդ գնա . ու ոտքե-
րուդ քաղաքին մէջը մտած ա-
13 տենը տղան պիտի մեռնի . Ու բոլոր
Իսրայէլը լալով զանիկայ պիտի
թաղեն . վասն զի Յերոբովամէն՝
միայն անիկայ գերեզման պիտի
մտնէ . որովհետեւ Իսրայէլի Տէր
Աստուծոյն առջեւը Յերոբովամին
տանը մէջ՝ բարի բան մը միայն ա-
14 նոր վրայ գտնուեցաւ ։ Եւ Տէրը ի-
րեն համար Իսրայէլի վրայ մէկ թա-
գաւոր մը պիտի հանէ , որ անի-
կայ նոյն օրը Յերոբովամին տու-
նը պիտի կոտորէ . ու ալ ի՛նչ
... գրեթէ հիմա պիտի կատարուի
15 ... ։ Եւ Տէրը ջուրերու մէջ
եղող շարժուն եղէգի պէս՝ Իսրա-
յէլը պիտի զարնէ , ու Իսրայէլը
պիտի խլէ այս բարի երկրին երե-
սէն , որն որ անոնց հայրերուն
տուեր էր , ու զանոնք Գետին
անդին կողմը պիտի ցրուէ , որով-
հետեւ Տէրը բարկացընելով իրենց
Աստարովթի կուռքեր շինեցին .
16 Եւ Իսրայէլը երեսէ պիտի ձգէ ,
Յերոբովամին ըրած մեղքերուն
համար , ու Իսրայէլին ալ մեղան-
չել տալուն համար ։
17 Ան ատենը Յերոբովամին կնիկը
ելաւ գնաց , ու Թերսա մտաւ . ու
անիկայ տանը դռնէն ներս մտա-
18 ծին պէս , տղան մեռաւ ։ Եւ զա-
նիկայ թաղեցին . ու բոլոր Իսրա-
յէլը անոր վրայ լացին , Տէրոջը
խօսքին համեմատ՝ որ իր ծառային
Աքիա մարգարէին ձեռքովը խօսեր
էր ։
19 Ու Յերոբովամին մնացորդ պատ-
մութիւնը՝ թէ ինչպէս պատե-
րազմ ըրաւ , և թէ ինչպէս թա-
գաւորեց , ահա Իսրայէլի թագա-
ւորներուն յիշատակաց գրքին մէջը
20 գրուած է ։ Եւ Յերոբովամին
թագաւորութիւն ըրած օրերը
քսանուերկու տարի եղաւ , ու իր
հայրերուն հետ քնացաւ . ու անոր
տեղը՝ անոր որդին Նադաբը թա-
գաւոր եղաւ ։
21 Եւ Սողոմոնին որդին Ռոբովամը 954
Յուդայի մէջ թագաւորեց . Ռո-
բովամ քառասունըմէկ տարեկան էր
երբոր թագաւոր եղաւ . և տասն- 975
ուեօթը տարի թագաւորութիւն
ըրաւ Երուսաղէմի մէջ , այն
քաղաքին մէջ՝ որն որ Տէրը Իս-
րայէլին ամէն ցեղերէն ընտրեց՝ իր
անունը հոն դնելու համար . Ու
անոր մայրը Ամմոնացի էր Նաամա
22 անունով ։ Եւ Յուդայեանք ալ 972
Տէրոջը առջեւը չարութիւն ըրին .
ու իրենց ըրած մեղքերովը՝ իրենց
հայրերուն բոլոր ըրածէն աւելի
23 զանիկայ բարկացուցին ։ Եւ ա-
նոնք ալ ամէն բարձր բլուրներուն
վրայ , ու ամէն կանանչ ծառե-
րուն տակը բարձր տեղեր , ու ար-
ձաններ , և Աստարովթի կուռքեր
24 շինեցին ։ Ու երկրին մէջ Սոդո-
մական մեղք ալ գործողներ կային ,
ու Տէրոջը Իսրայէլի որդւոցը առ-
ջեւէն վռնտած ազգերուն բոլոր
գարշելի բաներուն նման կ'ընէին ։
25 Եւ Ռոբովամ թագաւորին 971
հինգերորդ տարին՝ Եգիպտոսի Սի-
սակ թագաւորը Երուսաղէմի վրայ
26 ելաւ . Ու Տէրոջը տանը գանձերը
ու թագաւորին տանը գանձերը ա-
ռաւ . ամէնն ալ առաւ . Սողո-
մոնին շինած բոլոր ոսկիէ ասպար-
27 ներն ալ առաւ ։ Եւ Ռոբովամ
թագաւորը անոնց տեղը պղնձէ
ասպարներ շինեց , ու զանոնք
թագաւորական տանը դուռը
պահպանութիւն ընող սուրհան-
դակաց ոստիկաններուն ձեռքը

Ա Տնօյ. Բ Թագ. ժբ. 7. 8 ; Գլ. ժզ. 2 ։
Բ Գլ. ժա. 31 ։
Գ Գլ. ժա. 33, 38 ; ժե. 5 ։
Դ Եբր. Իմ ետեւէս եկող
Ե Գլ. ժբ. 28 ; Բ Մն. ժա. 15 ։
Զ Նեեմ. Թ. 26 ; Սաղ. Ծ. 17 ; Եզեկ. Իգ. 35 ։
իբր 956
Է Գլ. ժե. 29 ։
Ը Գլ. Իա. 21 ; Դ Թագ. Թ. 8 ։
Թ Բ Օր. Լբ. 36 ; Դ Թագ. ժդ. 26 ։
Ժ Գլ. ժզ. 4 ; Իա. 24 ։
ԺԱ Հմր 17 ։
ԺԲ Բ Մն. ժբ. 12 ; ժԹ. 3 ։
ԺԳ Գլ. ժե. 27, 28, 29 ։
ԺԴ Կամ՝ այսօր
ԺԵ Դ Թագ. ժէ. 6 ; Սաղ. Ծբ. 5 ։
ԺԶ Յես. Իդ. 15, 16 ։
ԺԷ Դ Թագ. ժե. 29 ։
ԺԸ Եւ. Լդ. 13 ; Բ Օր. ժբ. 3, 4 ։

Ն. Ք. ՆՔ. իբր 956
ԺԹ Կամ՝ անտառներ
Ի Գլ. ժբ. 30 ; ժգ. 34 ; ժե. 30, 34 ; ժզ. 2 ։
ԻԱ Գլ. ժզ. 6, 8, 15, 23 ; Երգ. Զ. 4 ։
ԻԲ Հմր 12 ։
ԻԳ Հմր 13 ։
ԻԴ Բ Մն. ժգ. 2, 22 ։
ԻԵ Բ Մն. ժբ. 13
ԻԶ Գլ. ժա. 36 ։
ԻԷ Հմր 31 ։
ԻԸ Բ Մն. ժբ. 1 ։
ԻԹ Բ Օր. Լբ. 21 ; Սաղ. Հը. 58 ; Կոր. Ժ. 22 ։
Լ Հեշ. ԿԵ. 5 ։
ԼԱ Բ Օր. ժբ. 2 ; Եզեկ. ժզ. 24, 25 ։
ԼԲ Դ Թագ. ժէ. 9, 10 ։
ԼԳ Բ Օր. Իգ. 17 ; Գլ. ժե. 12 ; Իբ. 46 ; Դ Թագ. Իգ. 7 ։
ԼԴ Գլ. ժա. 40 ; Բ Մն. ժբ. 2 ։
ԼԵ Բ Մն. ժբ. 9, 10, 11 ։
ԼԶ Գլ. Ժ. 17 ։

Ն. Ք. ԳՔ. 971

բ Մն. ժբ. 15։
ց Գլ. ժբ. 24։ ժե. 6։ բ Մն. ժբ. 15։
958
ա բ Մն. ժբ. 16։
բ Հմր 21։
գ բ Մն. ժբ. 16։ Մատ. ա. 7։
դ Եբր. Աբիամ։

28 յանձնեց ։ Ու երբոր Թագաւորը
Տէրոջը տունը կ'երթար. սուրհան-
դակները զանոնք կը կրէին, ու
ետքը զանոնք սուրհանդակներուն
խուցը կը դարձրնէին ։
29 ªԵւ Ռոբովամին մնացորդ պատ-
մութիւնը, ու անոր ամէն ըրածը՝
ահա Յուդայի Թագաւորներուն
յիշատակաց գրքին մէջը գրուած
30 է ։ Ու ᵇՌոբովամին և Յերոբո-
վամին մէջտեղը միշտ պատերազմ
31 կար ։ ᶜԵւ Ռոբովամ իր հայրե-
րուն հետ քնացաւ, ու իր հայրե-
րուն հետ Դաւիթի քաղաքին մէջը
թաղուեցաւ. ᵇԵւ անոր մայրը Ամ-
մոնացի էր Նաամա անունով. ու
անոր տեղը՝ անոր որդին ᵍ*Աբիան
թագաւոր եղաւ ։

## ԳԼ. ԺԵ

1 Աբիային դէշ վարմունքը ։ 7 Ասա անոր տե-
ղը կը յաջորդէ ։ 9 Ասային բարի վարմուն-
քը ։ 16 Բաասային ու իրեն մէջտեղը եղած
պատերազմը պատճառ կ'ըլլայ որ ինքը Բե-
նադադին հետ դաշնակցութիւն կ'ընէ ։ 23
Յովսափատ՝ Ասային տեղը կը յաջորդէ ։ 25
Նադաբին դէշ վարմունքը ։ 27 Բաասա ա-
նոր դէմ ապստամբելով՝ Աքիային մարգա-
րէութիւնը 'ի գործ կը դնէ ։ 31 Նադաբին
մահը ։ 33 Բաասային դէշ վարմունքը ։

958
ա բ Մն. ժգ. 1։

բ բ Մն. ժա. 20. 21. 22։
գ բ Մն. ժգ. 2 Մաաքա՝ Միքիա. Գաբաացի Ուրիէլին աղջիկը։
դ Գլ. ժա. 4։ Սաղ. ճժթ. 80։
ե Գլ. ժա. 32. 36։ բ Մն. իա. 7։
զ Գլ. ժա. 36։
է Գլ. ժգ. 8։
ը բ Թագ. ժա. 4. 15։ ժբ. 9։
թ Գլ. ժգ. 30։
ժ բ Մն. ժգ. 2, 3, 22։
955
ի բ Մն. ժգ. 1։

1 Եւ ªՆաբատեան Յերոբովամին
թագաւորութեանը տասնու-
ութերորդ տարին՝ Աբիա Յուդա-
2 յի վրայ թագաւորեց ։ Անիկայ
Երուսաղէմի մէջ իրեք տարի թա-
գաւորութիւն ըրաւ. ᵇու անոր
մօրը անունը ᶜՄաաքա էր, Ա-
3 բիսողոմին աղջիկն էր ։ Եւ անի-
կայ իրմէ առաջ իր հօրը ըրած բո-
լոր մեղքերուն հետեւեցաւ. ու ᵈա-
նոր սիրտը իր Տէր Աստուծոյն հետ
կատարեալ չէր, իր հօրը Դաւի-
4 թին սրտին պէս ։ Բայց ᵉԴաւի-
թին սիրոյն համար՝ անոր Տէր Աս-
տուածը Երուսաղէմի մէջ անոր մէկ
ճրագ մը տուաւ, անկէ ետքը ա-
նոր որդին նստեցրնելով, ու Երու-
5 սաղէմը հաստատելով. Որովհետև
Դաւիթ՝ ᶠՏէրոջը առջևը ուղղու-
թիւն ըրաւ, ու իր կենացը բոլոր
օրերուն մէջ բնաւ անոր պատուի-
րանքներէն չխոտորեցաւ, ᵍՔետա-
6 ցի Ուրիային բանէն 'ի զատ ։ ʰԵւ
Ռոբովամին ու Յերոբովամին մէջ-
տեղը պատերազմ կար՝ անոր կե-
նացը բոլոր օրերուն մէջ ։
7 ⁱՈւ Աբիային մնացորդ պատմու-
թիւնը, և անոր բոլոր ըրածը՝ ահա
Յուդայի թագաւորներուն յիշա-
տակաց գրքին մէջը գրուած է. ու
Աբիային ու Յերոբովամին մէջտեղը
8 պատերազմ կար ։ ʲԵւ Աբիա իր
հայրերուն հետ քնացաւ. ու զա-
նիկայ Դաւիթի քաղաքին մէջը

Ն. Ք. ԳՔ. 955

ա Թագ. ժե. մօ-րը. տես հմր 2։
լ բ Մն. ժգ. 2։
ի ըր 951
խ Գլ. ժգ. 24։ իբ. 47։
ծ բ Մն. ժե. 16։
կ Եւ. լբ. 20։
հ Գլ. իբ. 44։ բ Մն. ժե. 17. 18։
ձ Տես հմր 8։
ղ բ Մն. ժզ. 1. 2։
ճ Յես. ժը. 25։
մ Տես գլ. ժբ. 27։
յ Գլ. ժա. 23. 24։
ն բ Մն. ժզ. 2։
շ դ Թագ. ժե. 29։
ո Դատ. ժը. 29։
չ բ Թագ. ի. 14։
պ բ Մն. ժզ. 6։

թաղեցին. և անոր տեղը՝ անոր
որդին Ասան թագաւոր եղաւ ։
9 Իսրայէլի Յերոբովամ թագաւո-
րին քսաներորդ տարին՝ Ասա Յու-
10 դայի վրայ թագաւոր եղաւ. Ու
Երուսաղէմի մէջ քառասունըմէկ
տարի թագաւորութիւն ըրաւ. և
անոր ⱼմօրը անունը Մաաքա էր,
11 Աբիսողոմին աղջիկն էր ։ ˡԵւ
Ասա իր հօրը Դաւիթին պէս՝ Տէ-
րոջը առջևը ուղղութիւն ըրաւ ։
12 ˣՈւ Սոդոմական մեղք գործողները
երկրէն վերցուց, և իր հայրերուն
շինած բոլոր կուռքերը բնաջինջ ը-
13 րաւ ։ Ու ᶜիր մայրը Մաաքան
տիկնութենէ հանեց. քանզի անի-
կայ Աստարովթի կուռք մը շիներ
էր. և Ասա անոր կուռքը կոտրեց,
ու ˡԿեդրոն հեղեղատին մէջը այ-
14 րեց ։ ʰԲայց բարձր տեղուանքը
չվերցան. սակայն Ասային ᵈսիրտը
իր կենացը բոլոր օրերուն մէջ՝ Տէ-
15 րոջը հետ կատարեալ էր ։ Եւ իր
հօրը նուիրած բաները ու իր նուի-
րած բաները՝ արծաթը ու ոսկին ու
անօթները՝ Տէրոջը տունը տարաւ ։
16 Եւ Ասային ու Իսրայէլի Բաասա
թագաւորին մէջտեղը՝ անոնց բոլոր
17 օրերուն մէջ պատերազմ կար ։ Ու
ˡԻսրայէլի թագաւորը Բաասա Յու-
դայի դէմ ելաւ. և ᵗՌաման շինեց,
ᵐոր Յուդայի Ասա թագաւորին ել-
18 լող մտնող մարդ մը չթողու ։ Ու-
տի Ասա Տէրոջը տանը գանձերուն
մէջը՝ ու թագաւորական տանը
գանձերուն մէջը մնացած բոլոր ար-
ծաթը ու ոսկին առաւ, և իր ծա-
ռաներուն ձեռքը տուաւ, ու Ասա
թագաւորը՝ ʲԴամասկոս բնակող
Ասորւոց թագաւորին՝ Եզիոնի որ-
դւոյն Տաբրեմոնի որդւոյն ⁿԲենա-
դադին խրկեց զանոնք, ու ըսաւ.
19 Իմ ու քու մէջս, և իմ հօրս ու
քու հօրդ մէջը դաշնակցութիւն
կայ. ահա քեզի արծաթ ու ոսկի
ընծայ խրկեցի. աղէ Իսրայէլի Բա-
ասա թագաւորին հետ ունեցած
դաշնակցութիւնդ աւրէ, որ անի-
20 կայ իմ վրայէս ետ քաշուի ։ Ու
Բենադադ՝ Ասա թագաւորին խօսքը
մտիկ ըրաւ. և իր զօրքերուն իշ-
խանները Իսրայէլի քաղաքներուն
վրայ խրկեց. ու ˢԻյոնը, ᵒԴանը,
ˢԱբէլբեթմաաքան, ու բոլոր Քե-
ներեթը, ու բոլոր Նեփթաղիմի
21 երկիրը զարկաւ ։ Եւ Բաասա աս
բանը լսելով, Ռաման շինելէն ետ
կեցաւ, ու Թիրսայի մէջ նստաւ ։
22 ᵖԱն ատենը Ասա թագաւորը բոլոր
Յուդային մարդիկները կանչեց ա-
ռանց մէկը ձգելու, որոնք Բաասա-
յին շինած Ռամայի քարերը ու
փայտերը վերցուցին. և Ասա թա-

Ն. Ք. ԳՔ. Իբր 951

գաւորը անոնցմով Բենիամինի
Գաբան ու Մասփան շինեց։
Չ Յես. Իա. 17։ — Յես. Ժը. 26։
23 Եւ Ասային բոլոր մնացորդ պատ-
մութիւնը, ու անոր բոլոր զօրու-
թիւնը, ու բոլոր ըրածը, և անոր
շինած քաղաքները՝ ահա Յուդայի
Բ Մն. Ժզ. 12։
թագաւորներուն յիշատակաց գըր-
քին մէջը գրուած են. բայց անի-
կայ իր ծերութեան ատենը ոտքե-
914
24 րու ցաւ ունէր։ Ու Ասա իր հայ-
րերուն հետ քնացաւ, և իր հայ-
րերուն հետ իր հօրը Դաւիթին
Հ Բ Մն. Ժէ. 1։ Մատ. Ա. 8։
քաղաքին մէջը թաղուեցաւ. Ու
անոր տեղը՝ անոր որդին Յովսա-
փատը թագաւոր եղաւ։
954
25 Եւ Յուդայի Ասա թագաւորին
երկրորդ տարին՝ Յերոբովամի որ-
դին Նադաբը Իսրայէլի վրայ թա-
գաւոր եղաւ. ու անիկայ Իսրայէլի
վրայ երկու տարի թագաւորու-
26 թիւն ըրաւ, Եւ Տէրոջը առջև
չարութիւն ըրաւ. ու իր հօրը
Գլ. Ժբ. 30։ Ժգ. 16։
ճամբուն մէջ քալեց, ու անոր
ըրած մեղքին մէջ՝ որով Իսրայէլին
27 մեղանչել տուաւ։ Եւ Իսաքարի
տունէն Աքիայի որդին Բաասան
Գլ. Ժդ. 14։
անոր դէմ գլուխ վերցուց. ու Բա-
ասա զանիկայ Փղշտացւոց Գա-
Յես. ԺԹ. 44։ Իա. 23։ Գլ. Ժզ. 15։
բաթոնին քովը զարկաւ. երբոր
Նադաբ բոլոր Իսրայէլի հետ Գա-
28 բաթոնը պաշարեր էր. Եւ Յու-
դայի Ասա թագաւորին երրորդ
տարին՝ Բաասա մեռցուց զանի-
կայ, ու անոր տեղը թագաւոր ե-
29 ղաւ. Եւ իրը թագաւոր եղածին
պէս Յերոբովամին բոլոր տունը
Գլ. Ժդ. 10, 14։
զարկաւ. — Տէրոջը խօսքին հա-
մեմատ՝ որ իր ծառային Սելոնացի
Աքիա մարգարէին ձեռքովը խօսեր
էր, Յերոբովամէն ընաւ մէկ շնչա-
ւոր մը ողջ չթողուց, ու զանիկայ
Գլ. Ժդ. 9, 16։
30 բնաջինջ ըրաւ՝ Յերոբովամին
մեղքերուն համար՝ որոնցմով մե-
ղանչեր էր, ու Իսրայէլին մեղան-
չել տուեր էր, Իսրայէլին Տէր Աս-
տուածը բարկացընելով։
31 Եւ Նադաբին մնացորդ պատմու-
թիւնը, ու անոր բոլոր ըրածը՝ ա-
հա Իսրայէլի թագաւորներուն յի-
շատակաց գրքին մէջը գրուած է։
Հմր 16։
32 Եւ Ասային ու Իսրայէլի Բաասա
թագաւորին մէջտեղը՝ անոնց բոլոր
օրերուն մէջը պատերազմ կար։
953
33 Յուդայի Ասա թագաւորին եր-
րորդ տարին՝ Աքիայի որդին Բաա-
սան՝ Թերսայի մէջ բոլոր Իսրայէլի
վրայ թագաւոր եղաւ, — քսան-
ուչորս տարի թագաւորութիւն ը-
34 րաւ։ Եւ անիկայ Տէրոջը առջև
Գլ. Ժբ. 28, 29։ Ժգ. 33։ Ժդ. 16։
չարութիւն ըրաւ, ու Յերոբովա-
մին ճամբուն մէջ քալեց, և անոր
մեղքին մէջ՝ որով անիկայ Իսրա-
յէլին մեղանչել տուեր էր։

## ԳԼ. ԺԶ

Ն. Ք. ԳՔ. Իբր 930

1 Յէուին մարգարէութիւնը Բաասային դէմ։ 6 Էլա իր հօրը տեղը կը յաջորդէ։ 8 Զամբրի՝ Էլային դէմ դաւաճանութիւն ընելով՝ անոր տեղը կ'անցնի։ 11 Յէուին մարգարէութիւնը Զամբրիին ձեռքովը կը կատարուի։ 15 Ժողովուրդը Ամրին թագաւոր կ'ընեն. ու Զամբրի յուսահատելով՝ ինքզինքը կ'այրէ։ 21 Ժողովուրդին մէջ երկպառակութիւն պատճառելով՝ Ամրի՝ Թամնիին դէմ յաղթող կը գտնուի։ 23 Ամրի՝ Սամարիան կը շինէ։ 25 Անոր գէշ վարմունքը։ 27 Աքաաբ անոր տեղը կը յաջորդէ։ 29 Աքաաբին խիստ գէշ վարմունքը։ 34 Յեսուին անէծքը՝ Երիքովը նորոգող Յիելին վրայ կը կատարուի։

1 Ու Բաասային համար՝ Տէրոջը
խօսքը Անանիի որդւոյն Յէուին
Հմր 7։ Բ Մն. ԺԹ. 2։ Ի. 34։
2 եղաւ՝ ըսելով. Որովհետև քեզ
փոշիէն բարձրացուցի, ու քեզ իմ
Գլ. Ժդ. 7։
ժողովուրդիս Իսրայէլին վրայ իշ-
խան ըրի, և դուն Յերոբովամին
Գլ. Ժե. 34։
ճամբան գացիր, ու իմ ժողովուր-
դիս Իսրայէլին մեղանչել տուիր,
ու անոնց մեղքերովը զիս բարկա-
3 ցուցիր, Ահա ես Բաասան ու ա-
Հմր 11։
նոր տունը՝ բնաջինջ պիտի ընեմ,
Եբր. Բաասային ետևէն ու անոր տանը ետևէն
և քու տունդ Նաբատեան Յերո-
բովամին տանը պէս պիտի ընեմ։
4 Բաասային քաղաքի մէջ մեռնո-
Գլ. Ժդ. 10։ Ժե. 29։
ղը՝ շուները պիտի ուտեն, ու
դաշտի մէջ մեռնողը՝ երկինքի
Գլ. Ժդ. 11։
թռչունները պիտի ուտեն։
5 Եւ Բաասային մնացորդ պատ-
մութիւնը, ու անոր ըրածը, ու
զօրութիւնը՝ ահա Իսրայէլի թա-
Բ Մն. Ժզ. 1։
գաւորներուն յիշատակաց գրքին
6 մէջը գրուած է։ Եւ Բաասա իր
հայրերուն հետ քնացաւ, ու Թեր-
Գլ. Ժդ. 17։ Ժե. 21։
սայի մէջ թաղուեցաւ. և անոր
տեղը՝ անոր որդին Էլա թագաւոր
7 եղաւ։ Նաև Անանիի որդւոյն
Հմր 1։
Յէու մարգարէին ձեռքովը Տէրոջը
խօսքը եղաւ Բաասային ու անոր
տանը վրայ՝ ան ամէն չարիքներուն
համար, որ ինքը Տէրոջը առջև
ըրած էր, զանիկայ իր ձեռքերուն
գործքովը բարկացընելով, — Յե-
րոբովամին տանը պէս ըլլալով.
Նաև զանիկայ մեռցընելուն հա-
Գլ. Ժե. 27, 29։ Տես Ովս. Ա. 4։
մար։
8 Յուդայի Ասա թագաւորին քսան-
ուվեցերորդ տարին՝ Բաասայի
որդին Էլա՝ Թերսայի մէջ Իսրայէ-
լի վրայ թագաւոր եղաւ, — եր-
930
կու տարի թագաւորութիւն ըրաւ։
9 Անիկայ երբոր Թերսայի մէջ՝ Թեր-
սայի տանը հազարապետին Արսա-
յին տունը խմեր ու գինովցեր էր,
անոր ծառան Զամբրի՝ որ անոր
Դ Թագ. Թ. 31։
կառքերուն կէսին վրայ իշխան էր,
10 անոր դէմ գլուխ վերցուց. Եւ
Զամբրի ներս մտնելով՝ զանիկայ
զարկաւ մեռցուց, և անոր տեղը
929
ինքը թագաւոր եղաւ, Յուդայի
Ասա թագաւորին քսանուեօթնե-

Ն. Ք. ՂՔ.
929

11 րորդ տարին ։ Ու երբոր թագա-
ւոր եղաւ, ու իր աթոռը նստաւ,
իսկոյն Բաասային բոլոր տունը՝
թէ անոր ազգականները և թէ
բարեկամները մեռցուց, ու ա-
նոր ւմէկ էրիկ մարդը ողջ չթո-
12 ղուց ։ Եւ Զամբրի՝ Բաասային
բոլոր տունը բնաջինջ ըրաւ, Բա-
ասային վրայով ԻՅէու մարգա-
րէին ձեռքովը ՖՅէրոջը ըսած խօս-
13 քին համեմատ, Բաասային բոլոր
մեղքերուն համար, ու անոր որ-
դւոյն Էլային մեղքերուն համար,
որոնցմով իրենք մեղանչեցին, և
Իսրայէլին մեղանչել տուին, ու
Կիրենց անապաշտութիւններովը
Իսրայէլին Տէր Աստուածը բար-
կացուցին ։
14 Ու Էլային մնացորդ պատմու-
թիւնը, և անոր բոլոր ըրածը՝ ա-
հա Իսրայէլի թագաւորներուն յի-
շատակաց գրքին մէջը գրուած է ։
15 Յուդայի Ասա թագաւորին քը-
սանուեօթներորդ տարին՝ Զամբրի
Թերսայի մէջ եօթը օր թագաւո-
րութիւն ըրաւ. բայց ժողովուրդը
Փղշտացւոց ՃԳաբաթոնին դէմ
16 բանակեր էր ։ Եւ բանակին մէջը
եղող ժողովուրդը լսելով որ Զամբ-
րի գլուխ վերցուցեր է, ու նաև
թագաւորը մեռցուցեր է, նոյն օրը
բոլոր Իսրայէլը բանակին մէջը Ամ-
րի զօրավարը Իսրայէլի վրայ թա-
17 գաւոր դրին ։ Եւ Ամրի ու անոր
հետ բոլոր Իսրայէլը Գաբաթոնէն
ելան, ու Թերսան պաշարեցին ։
18 Ու երբոր Զամբրի՝ քաղաքին առ-
նուիլը տեսաւ, թագաւորական
տանը *ներսի կողմը մտաւ, և իր
վրայ թագաւորական տունը կրա-
19 կով այրեց, ու մեռաւ, իր գործած
մեղքերուն համար՝ որոնցմով Տէ-
րոջը առջևը չարութիւն ըրաւ,
Յու քալեց Յերոբովամին ճամբուն
մէջ ու անոր ըրած մեղքին մէջ,
որով անիկայ Իսրայէլին մեղանչել
տուեր էր ։
20 Եւ Զամբրիին մնացորդ պատ-
մութիւնը, ու անոր ըրած դաւա-
ճանութիւնը՝ ահա Իսրայէլի թա-
գաւորներուն յիշատակաց գրքին
մէջը գրուած է ։
21 Ան ատենը Իսրայէլի ժողովուրդը
երկուքի բաժնուեցաւ. ժողովուր-
դին կէսը Գինաթի որդւոյն Թաբ-
նիին ետևէն գնաց, որ զանիկայ
թագաւոր ընեն. ու կէսն ալ Ամ-
22 րիին ետևէն գնաց ։ Եւ Ամրիին
ետևէն գացող ժողովուրդը՝ Գի-
նաթեան Թաբնիին ետևէն գացող
ժողովուրդէն զօրաւոր գտնուե-
ցաւ. ու Թաբնին մեռաւ, և Ամ-
23 րին թագաւոր եղաւ ։ Յուդայի
Ասա թագաւորին երսունումէկե-
րորդ տարին՝ Ամրի Իսրայէլի վրայ
թագաւոր եղաւ, եւ տասուերկու
տարի թագաւորութիւն ըրաւ. վեց
տարի Թերսայի մէջ թագաւորու-
24 թիւն ըրաւ. Ու Սամերէն՝ երկու
տաղանդ արծաթով Սամարիայի
լեռը ծախու առաւ, ու լեռանը
վրայ քաղաք շինեց. և շինած քա-
ղաքին անունը՝ ան լեռանը տիրոջը
Սամերին անունովը՝ ՇՍամարիա
կոչեց ։
25 Ու ԾԱմրի Տէրոջը առջևը չարու-
թիւն ըրաւ, և բոլոր իրմէ առաջ
26 եղողներէն աւելի չար եղաւ. Քան-
զի անիկայ ՃՆաբատեան Յերոբո-
վամին բոլոր ճամբուն մէջ քալեց,
ու անոր մեղքին մէջ՝ որով Իսրա-
յէլին մեղանչել տուաւ. անանկ
որ Ջիրենց անապաշտութիւններովը
Իսրայէլին Տէր Աստուածը բարկա-
ցուցին ։
27 Եւ Ամրիին ըրած գործքերուն
մնացորդ պատմութիւնը, ու անոր
ըրած զօրութիւնը՝ ահա Իսրայէլի
թագաւորներուն յիշատակաց գըր-
28 քին մէջը գրուած է ։ Եւ Ամրի իր
հայրերուն հետ քնացաւ, ու Սա-
մարիայի մէջ թաղուեցաւ. ու
անոր տեղը՝ անոր որդին Աքաաբը
թագաւոր եղաւ ։
29 Եւ Ամրիին որդին Աքաաբը՝
Յուդայի Ասա թագաւորին երսու-
նուութերորդ տարին՝ Իսրայէլի
վրայ թագաւոր եղաւ. ու Ամրիին
որդին Աքաաբը Իսրայէլի վրայ Սա-
մարիայի մէջ քսանուերկու տարի
30 թագաւորութիւն ըրաւ ։ Եւ Ամ-
րիին որդին Աքաաբը բոլոր իրմէ
առաջ եղողներէն աւելի՝ Տէրոջը
31 առջևը չարութիւն ըրաւ ։ Ու Նա-
բատեան Յերոբովամին մեղքերուն
մէջ քալելը՝ անոր աչքին ոչինչ բան
մը սեպուելով, ՆՍիդոնացւոց Եթ-
բաաղ թագաւորին աղջիկը՝ Յե-
զաբէլը ՇկնիկառաւՌ, և գնաց Բա-
հաղին ծառայութիւն ըրաւ, ու
32 անոր երկրպագութիւն ըրաւ ։ Եւ
Սամարիայի մէջ՝ իր շինած ՍԲահա-
ղի տանը մէջ՝ Բահաղին սեղան մը
33 կանգնեց ։ ՎՈւ Աքաաբ Աստարով-
թի կուռք մը շինեց. և Աքաաբ
իր ըրած գործքերովը Տիրմէ առաջ
եղող Իսրայէլի բոլոր թագաւորնե-
րէն աւելի՝ Իսրայէլի Տէր Աստուա-
ծը բարկացուց ։
34 Անոր օրերը՝ Բեթելացի Յիէլը
Երիքովը շինեց. եւ իր անդրանիկ
տղովը Աբիրոնով՝ անոր հիմը դը-
րաւ, և իր պզտիկ տղովը Սեգու-
բով՝ անոր դռները կանգնեց, ՑՆա-
ւեան Յեսուին ձեռքովը Տէրոջը ը-
սած խօսքին համեմատ ։

Լ Ա Թագ. ԺԵ. 22.
Ի Հմր 1.
Յ Հմր 8.
Գ Բ Օր. ԼԲ. 21. Ա Թագ. ԺԲ. 21. Եսայ. ԽԱ. 29. Յովն. Բ. 8. Ա Կոր. Ը. 4. Ժ. 19.
Ճ Գլ. ԺԵ. 27.
* Կամ՝ պալատը
Յ Գլ. ԺԲ. 28. ԺԵ. 26, 34.
925

Ն. Ք. ՂՔ.
925
Շ Տես Գլ. ԺԳ. 32. Դ Թագ. ԺԷ. 24. Յով. Դ. 4.
Ծ Միք. Զ. 16.
Ճ Հմր 19.
Ջ Հմր 18.
918
Ն Դատ. ԺԲ. 7.
Շ Բ Օր. Է. 3.
Ս Գլ. ԽԱ. 25, 26. Դ Թագ. Ժ. 18. ԺԷ. 16.
Վ Դ Թագ. Ժ. 21, 26, 27.
Տ Դ Թագ. ԺԳ. 6. ԺԷ. 10. ԻԱ. 3. Երեմ. ԺԷ. 2.
Ր Հմր 30. Գլ. ԻԱ. 25.
Ց Յես. Զ. 26.

Ն. Ք. Գ. Ք. Իբր 910

## ԳԼ. ԺԷ

1 Եղիա՝ Աքաաբին դէմ մարգարէութիւն ընելէն ետքը՝ Տէրը Քերիթ կը խրկէ զանիկայ, ու հոն ագռաւները զանիկայ կը կերակրեն : 8 Աստուած Սարեփթացի որբեւարի կնկան մը տունը կը խրկէ զանիկայ : 17 Եղիա՝ որբեւարի կնկանը մեռած տղան կը յարուցանէ : 24 ու որբեւարին կը հաւատայ անոր :

1 Եւ Գաղաադու բնակիչներէն Թեսբ-
ացի Եղիան Աքաաբին ըսաւ.
ա Իսրայէլին Տէր Աստուածը՝ բ որ- (ա Դ Թագ. Գ. 14 :)
ուն առջեւ կը կայնիմ, կենդանի (բ Բ Օր. Ժ. 8 :)
է, որ գ աս տարիներուս մէջ դ ցօղ (գ Ղուկ. Դ. 25 :)
ու անձրեւ պիտի չըլլայ, բայց եթէ (դ Յակ. Ե. 17 :)
իմ խօսքովս :
2 Ու Տէրոջը խօսքը անոր եղաւ՝
3 ըսելով. Ասկէ գնա, ու դէպ 'ի
արեւելք դառնալով՝ Յորդանանու
դիմացը եղող Քերիթ հեղեղատին
4 քովը պահուէ. Դուն անհեղեղա-
տէն ջուր պիտի խմես. ու ագռաւ-
ներուն հրամայեր եմ, որ հոն քեզ
5 կերակրեն : Եւ անիկայ գնաց, ու
Տէրոջը ըսածին պէս ըրաւ. ու գը-
նաց Յորդանանու դիմացը եղող
Քերիթ հեղեղատին քովը նստաւ :
6 Եւ ագռաւները առտուանց անոր
հաց ու միս՝ ու իրիկուան ալ հաց
ու միս կը բերէին, ու անիկայ հե-
7 ղեղատէն ջուր կը խմէր : Եւ ժա-
մանակէ մը ետքը հեղեղատը ցամ-
քեցաւ. վասն զի երկրի վրայ անձ-
րեւ չեկաւ :
8 Ու Տէրոջը խօսքը անոր եղաւ՝
9 ըսելով. Ելի՛ր, Սիդոնացւոց ե Սա- (ե Աբդ. 20 : Ղուկ. Դ. 26 :)
րեփթան գնա, ու հոն նստէ. ահա
հոն մէկ որբեւարի կնկան մը հրա-
10 մայեր եմ որ քեզ կերակրէ : Եւ
անիկայ ելաւ Սարեփթա գնաց. ու
քաղաքին դուռը հասնելով՝ տեսաւ
որ մէկ որբեւարի կնիկ մը փայտ կը
ժողվէր. ու զանիկայ կանչեց, ու
ըսաւ. Կ'աղաչեմ՝ ինծի ամանով
11 քիչ մը ջուր բեր որ խմեմ : Ու
երբոր անիկայ բերելու գնաց, Ե-
ղիա անոր ետեւէն կանչեց, ու ըսաւ.
Ձեռքդ պատառ մըն ալ հաց առ՝
12 ու ինծի բեր : Եւ կնիկը ըսաւ.
Քու Տէր Աստուածդ կենդանի է որ
նկանակ չունիմ, բայց միայն կա-
րասին մէջը մէկ բուռ չափ ալիւր
կայ, ու կուժին մէջն ալ քիչ մը
եղ կայ. և ահա երկու կտոր փայտ
կը ժողվեմ, որ երթամ զանիկայ
ինծի ու իմ տղուս համար եփեմ,
13 ու ուտենք, ու ետքը մեռնինք : Ու
Եղիա անոր ըսաւ. Մի՛ վախնար.
գնա՛ ըսածիդ պէս ըրէ. բայց անկէ
նախ ինծի համար մէկ պզտիկ չօթ
մը շինէ, ու ինծի բեր, և քեզի ու
քու տղուդ համար ետքը շինէ.
14 Քանզի Իսրայէլին Տէր Աստուածը
այսպէս կ'ըսէ. Կարասէն ալիւրը
պիտի չհատնի, ու կուժէն եղը պի-
տի չպակսի՝ մինչեւ այն օրը որ Տէրը
15 երկրի վրայ անձրեւ տայ : Ու ինք
գնաց, ու Եղիային ըսածին պէս
ըրաւ. ու անիկայ և ինքը ու իր
ընտանիքը խել մը ատեն կերան :
16 Կարասէն ալիւրը չհատաւ, ու կու-
ժէն եղը չպակսեցաւ, ինչպէս որ
Տէրը Եղիային ձեռքովը խօսեր
էր :
17 Եւ եղաւ որ աս բաներէն ետքը՝
տանը տիկնոջը տղան հիւանդա-
ցաւ, ու անոր հիւանդութիւնը
շատ ծանր էր, այնպէս որ անոր
18 վրայ շունչ չմնաց : Եւ ինք Ե-
ղիային ըսաւ. Մարդ Աստուծոյ,
զ Ինծի հետ ի՞նչ ունիս. միթէ իմ (զ Տես Ղուկ. Ե. 8 :)
մեղքս յիշեցնելու, ու իմ տղաս
մեռցնելու համար ինծի եկար :
19 Ու անիկայ անոր ըսաւ. Տղադ ին-
ծի տուր. ու զանիկայ անոր ծո-
ցէն առաւ, և իր բնակած վեր-
նատունը հանեց, ու զանիկայ իր
20 անկողինին մէջը պառկեցուց : Եւ
Տէրոջը աղաղակելով՝ ըսաւ. Ո՛վ
Տէր Աստուած իմ, իրաւցընէ՞
աս որբեւարի կնիկն ալ՝ որուն քո-
վը ես պանդխտութեամբ կը բը-
նակիմ, պիտի չարչարես, անոր
21 տղան մեռցնելով : է Ու տղուն (է Դ Թագ. Դ. 34, 35 :)
վրայ իրեք անգամ երկըննալով՝
ու Տէրոջը աղաղակելով, ըսաւ.
Ո՛վ Տէր Աստուած իմ, կ'աղաչեմ
որ աս տղուն հոգին իր մարմինին
22 դառնայ : Եւ Տէրը Եղիային ձայ-
նը լսեց. ու տղուն հոգին իր մար-
մինին դարձաւ. և անիկայ ը կենդա- (ը Եբր. ԺԱ. 35 :)
23 նացաւ : Ու Եղիա տղան առաւ,
ու զանիկայ վերնատունէն տունը
իջեցուց, և անոր մօրը տուաւ. ու
Եղիա ըսաւ. Նայէ՛, տղադ կեն-
24 դանի է : Եւ կնիկը Եղիային ը-
սաւ. Հիմա ասով թ գիտցայ որ (թ Յովհ. Գ. 2 : Ժզ. 30 :)
դուն Աստուծոյ մարդն ես, ու քու
բերնիդ մէջ Տէրոջը խօսքը ճշմա-
րիտ է :

## ԳԼ. ԺԸ

1 Սովին խիստ սաստկացած ատեն՝ Եղիա Աքաաբին խրկուելով՝ բարի Աբդիային կը հանդիպի : 9 Աբդիա՝ Աքաաբ թագաւորը Եղիային կը բերէ : 17 Եղիա՝ Աքաաբը յանդիմանելով՝ երկինքէն իջած կրակին միջոցովը Բահաղին մարգարէները ամօթով կ'ընէ : 42 Եղիա աղօթքով անձրեւ կը տեղացընէ, ու Աքաաբին հետ Յեզրայէլ կ'երթայ :

1 Եւ ա շատ ատեն անցնելէն ետքը՝ (Իբր 906)
Տէրոջը խօսքը երրորդ տարին (ա Ղուկ. Դ. 25 : Յակ. Ե. 17 :)
Եղիային եղաւ՝ ըսելով. Գնա՛ Ա-
քաաբին երեւցիր. ու բ երկրի վրայ (բ Բ Օր. ԻԸ. 12 :)
2 անձրեւ պիտի տամ : Ու Եղիա Ա-
քաաբին երեւնալու գնաց. և Սա-
մարիայի մէջ սաստիկ սով կար :
3 Ու Աքաաբ իր տանը տնտեսը
Աբդիան կանչեց. (ու Աբդիա Տէ-
4 րոջմէ շատ կը վախնար. Ու երբոր

Ն. Ք. Ա. Թւր 906

Յեզաբէլ՝ Տէրոջը մարգարէները
ջարդեց, Աբդիա հարիւր մարգարէ
առաւ, և զանոնք յիսուն յիսուն՝
քարայրներու մէջ պահեց, ու զա-
նոնք հացով ու ջրով կերակրեց։)
5 Եւ Աքաաբ ըսաւ Աբդիային. Ե-
կուր աս երկրիս մէջ եղած բոլոր
ջուրի աղբիւրներուն ու բոլոր հե-
ղեղատներուն քովերը պտըտինք,
կարելի է որ խոտ գտնենք, և ձիերը
ու ջորիները ապրեցընենք, ու բո-
լոր անասունները չկորսնցընենք։
6 Եւ անոնք երկիրը իրենց մէջը բաժ-
նեցին՝ պտըտելու համար. Աքաաբ
մէկ ճամբայէ մինակ գնաց, ու Աբ-
դիան մէկ ուրիշ ճամբայէ մինակ
գնաց։
7 Ու երբոր Աբդիա ճամբուն մէջն
էր, ահա Եղիան անոր դիմացը ե-
լաւ. ու Աբդիա զանիկայ ճանչցա-
ծին պէս՝ իր երեսին վրայ ինկաւ ու
ըսաւ. Արդեօք իմ տէրս Եղիան
8 դո՞ւն ես։ Ու Եղիա անոր ըսաւ.
Ես եմ. գնա՛ քու տիրոջդ ըսէ
9 թէ, Ահա Եղիան հոս է։ Եւ ա-
նիկայ ըսաւ. Ես ի՞նչ մեղք գոր-
ծեր եմ, որ դուն քու ծառադ Ա-
քաաբին ձեռքը կը մատնես, որ զիս
10 մեռցընէ։ Քու Տէր Աստուածդ
կենդանի է որ՝ մէկ ազգ մը կամ
թագաւորութիւն մը չմնաց, ուր
որ իմ տէրս՝ քեզ փնտռելու համար
մարդ խրկած չըլլայ. ու երբոր Չկայ
ըսին, ան թագաւորութեանը կամ
ան ազգին երդում ընել տուաւ՝ որ
11 քեզ գտած չեն։ Եւ հիմա դուն
կ'ըսես. Գնա քու տիրոջդ ըսէ թէ՝
12 Ահա Եղիան հոս է։ Ու կրնայ
ըլլալ որ ես քու քովէդ երթալէս
ետքը՝ գ Տէրոջը Հոգին քեզ իմ չը-
գիտցած տեղս փոխադրէ, ու ես
գացած Աքաաբին պատմած ըլլա-
լով՝ երբոր քեզ չգտնէ, զիս պիտի
մեռցընէ. ու ես քու ծառադ տղա-
յութենէս ի վեր Տէրոջմէ կը վախ-
13 նամ։ Իմ ըրածս իմ տիրոջս չը-
պատմուեցա՞ւ, թէ երբոր Յեզա-
բէլ Տէրոջը մարգարէները սպան-
նեց, ես Տէրոջը մարգարէներէն
հարիւր մարդ յիսուն յիսուն քար-
այրներու մէջ պահեցի, ու զանոնք
14 հացով ու ջրով կերակրեցի։ Եւ
հիմա դուն կ'ըսես. Գնա՛ ու տիրոջդ
ըսէ թէ՝ Ահա՛ Եղիան հոս է. ու
15 անիկայ զիս պիտի մեռցընէ։ Ու
Եղիա ըսաւ. Զօրութեանց Տէրը
որուն առջևը կը կայնիմ, կենդանի
է, որ այսօր անոր պիտի երևնամ։
16 Եւ Աբդիա՝ Աքաաբին առջևը ե-
լաւ, ու անոր պատմեց. ու Ա-
քաաբ՝ Եղիան դիմաւորելու գնաց։
17 Եւ Աքաաբ՝ Եղիան տեսածին պէս,
Աքաաբ անոր ըսաւ. դ Իսրայէլը

գ Դ Թագ. բ. 16; Եզեկ. գ. 12, 14; Մատ. դ. 1; Գործ. ը. 39։

դ Յես. է. 25; Գործ. ժզ. 20։

նեղութեան մէջ ձգողը դո՞ւն ես։
18 Ու անիկայ ըսաւ. Իսրայէլը ես
չնեղեցի, հապա դուն ու քու հօրդ
տունը. ե քանզի Տէրոջը պատուի-
րանքները թողուցիք, ու Բահա-
19 ղիմին ետևէն գացիք։ Եւ հիմա
մարդ խրկէ, ու բոլոր Իսրայէլը և
Բահաղին չորս հարիւր յիսուն մար-
գարէները, ու Յեզաբէլին սեղանէն
ուտող է Աստարովթի չորս հարիւր
մարգարէները ը Կարմեղոս լեռան
20 վրայ իմ քովս ժողվէ։ Եւ Աքաաբ
բոլոր Իսրայէլի որդւոցը մարդ խըր-
կեց, ու թ մարգարէները Կարմեղոս
լեռը ժողվեց։
21 Ու Եղիա բոլոր ժողովուրդին մօ-
տեցաւ, ու ըսաւ. ժ Դուք մինչև
ե՞րբ երկու մտքի վրայ կը կաղաք.
թէ որ Եհովան Աստուած է, անոր
ետևէն գացէք, իսկ թէ որ Բահա-
ղը Աստուած է, ի անոր ետևէն գա-
ցէք. և ժողովուրդը բնաւ պա-
22 տասխան մը չտուաւ անոր։ Ու
Եղիա ժողովուրդին ըսաւ. լ Տէրոջը
մարգարէն՝ ես միայն մնացի, խ և
Բահաղին մարգարէները չորս հա-
23 րիւր յիսուն մարդիկ են։ Ուրեմն
մեզի երկու զուարակ տրուի. ու
զուարակին մէկը անոնք իրենց հա-
մար ընտրեն, ու կտոր կտոր ընեն,
և զանիկայ փայտերու վրայ դնեն,
բայց կրակ չդնեն. ու մէկալ զուա-
րակը ես պատրաստեմ, ու զանի-
կայ փայտերու վրայ դնեմ, բայց
24 կրակ չդնեմ։ Եւ դուք ձեր աս-
տուծոյն անունը կանչեցէք, ես ալ
Եհովային անունը կանչեմ. ու
ծ կրակով պատասխան տուող աս-
տուածը՝ Աստուած անիկայ է. և
բոլոր ժողովուրդը պատասխան
տուին ու ըսին. Աս խօսքը բարի
է։
25 Ու Եղիա՝ Բահաղին մարգարէ-
ներուն ըսաւ. Ձեզի զուարակնե-
րուն մէկը ընտրեցէք, ու առաջ
դուք ըրէք. վասն զի դուք շատուոր
էք. ու ձեր աստուծոյն անունը
կանչեցէ՛ք, բայց կրակ մի՛ դնէք։
26 Եւ անոնք իրենց տրուած զուարա-
կը առին, ու պատրաստեցին. և
առաւօտէն մինչև կէս օր Բահաղին
անունը կանչեցին, ու ըսին. Ո՛վ
Բահաղ՝ մեզի պատասխան տուր.
բայց կ ձայն չկար, ու պատասխան
տուող չկար. և անոնք իրենց շի-
նած սեղանին *քովը կը ցատկը-
27 տէին։ Ու երբոր կէս օր եղաւ, Ե-
ղիա զանոնք ծաղր ընելով ըսաւ.
Բարձր ձայնով կանչեցէք. քանզի
անիկայ աստուած է, գուցէ †խօ-
սակցութիւն մը ունի, կամ զբա-
ղած է, կամ ճամբորդութիւն կ'ը-
նէ, կամ գուցէ քնացած է, ու

Ն. Ք. Ա. Թւր 906

ե Գլ. իա. 20։

զ Բ Մն. ժե. 2։

է Գլ. ժզ. 33։

ը Յես. ժթ. 26։

թ Գլ. իբ. 6։

ժ Դ Թագ. ժէ. 41; Մատ. զ. 24։

ի Տն. Յես. իդ. 15։

լ Գլ. ժթ. 10, 14։

խ Հմր 19։

ծ Հմր 38; Ա Մն. իա. 26։

կ Սաղ. ճժե. 5; Երեմ. ժ. 5; Ա Կոր. ը. 4; ժբ. 2։

*Կամ՝ վրայ

†Կամ՝ մը-տածմունք

28 պէտք է որ արթըննայ ։ Եւ անոնք
բարձր ձայնով կը պոռային . ու
իրենց սովորութեանը պէս՝ [հ] դա-
նակներով ու նիզակներով իրենց
մարմինները կը կտրէին , մինչև որ
իրենց վրայէն արիւն կը վազէր ։
29 Ու երբոր կէս օրը անցաւ , մինչև ե-
րեկոյեան զոհին ատենը մարգարէու-
թիւն ըրին . ու [ձ] ձայն չկար , ու
պատասխան տուող չկար , ու մտիկ
ընող չկար ։
30 Ան ատենը Եղիա բոլոր ժողո-
վուրդին ըսաւ . Ինծի մօտեցէք .
ու բոլոր ժողովուրդը անոր մօտե-
ցաւ . [ղ] և անիկայ Տէրոջը փլած
31 սեղանը նորոգեց ։ Ու Եղիա տա-
սուերկու քար առաւ Յակոբին որ-
դւոցը ցեղերուն թուովը , որուն
Տէրոջը խօսքը եղաւ՝ ըսելով .
32 [ճ] Քու անունդ Իսրայէլ ըլլայ . Եւ
ան քարերով Տէրոջը անուանը սե-
ղան շինեց , ու սեղանին բոլորտիքը
մէկ փոս մը ըրաւ , որ երկու գրիւի
33 չափ հունտ կ'առնէր ։ Եւ [մ] փայ-
տերը շարեց , ու զուարակը կտոր
կտոր ըրաւ , և փայտերուն վրայ
34 դրաւ . Ու ըսաւ . Չորս սափոր լե-
ցուն ջուր բերէք , [յ] և ողջակէզին
վրայ ու փայտերուն վրայ թափե-
ցէք . ու ըսաւ . Երկրորդ անգամ
անանկ ըրէք , ու երկրորդ անգամ
անանկ ըրին . ու ըսաւ . Երրորդ
անգամ անանկ ըրէք , ու երրորդ
35 անգամ անանկ ըրին ։ Եւ ջուրը
սեղանին բոլորտիքը քալեց , [ն] ու
փոսն ալ ջրով լեցուեցաւ ։
36 Եւ երեկոյեան զոհին մատուցուե-
լու ատենը՝ Եղիա մարգարէն մօտե-
ցաւ ու ըսաւ . Ո՜վ Եհովայ [շ] Աս-
տուած Աբրահամու , Իսահակայ և
Իսրայէլի , [ո] այսօր գիտցուի որ Իս-
րայէլի մէջ Աստուած դուն ես , ու
ես քու ծառադ եմ , [չ] և աս բոլոր
37 բաները քու խօսքովդ ըրի . Ինծի
պատասխան տուր՝ ո՜վ Տէր , ինծի
պատասխան տուր . ու աս ժողո-
վուրդը գիտնայ թէ դուն ես Աս-
տուածը՝ ո՜վ Տէր , և թէ անոնց
սիրտը ետ դարձընողը դուն ես ։
38 Ան ատենը [պ] Տէրոջմէ կրակ իջաւ , և
ողջակէզը ու փայտերը և քարերը ու
հողը այրեց , ու փոսին մէջի ջուրն
39 ալ լափեց ։ Եւ բոլոր ժողովուրդը
այս բանը տեսնելով՝ երեսի վրայ ին-
կան , ու ըսին . [ջ] Եհովան է Աս-
տուածը , Եհովան է Աստուածը ։
40 Ու Եղիա անոնց ըսաւ . [ռ] Բահա-
ղին մարգարէները բռնեցէ՛ք , ու
անոնցմէ մարդ մը չազատի . և զա-
նոնք բռնեցին . ու Եղիա զանոնք
Կիսոն հեղեղատը իջեցուց , և [ս] հոն
զանոնք մեռցուց ։
41 Ու Եղիա Աքաաբին ըսաւ . Վե՛ր
ելի՛ր , կե՛ր ու խմէ՛ . վասն զի * անձ-
42 րևի ոտնաձայն կայ ։ Եւ Աքաաբ
ուտելու ու խմելու ելաւ , ու Եղիա
Կարմեղոս լերանը գլուխը ելաւ ,
ու գետինը ծռեցաւ , ու երեսը
43 ծունկերուն մէջը դրաւ . Եւ իր
մանչուն ըսաւ . Հիմա՛ ել , [տ] դէպ
'ի ծովակողմը նայէ . և անիկայ ե-
լաւ նայեցաւ , ու ըսաւ . Բան մը
չկայ . ու Եղիա եօթը անգամ՝ Նո-
44 րէն գնա՛ ըսաւ ։ Ու եօթներորդ
անգամին ըսաւ . Ահա ծովէն՝ մար-
դու թաթի չափ պզտիկ ամպ մը
կ'ելլէ . ու անիկայ ըսաւ . Ելի՛ր ,
Աքաաբին ըսէ՛ . Կառքդ լծէ ու ի-
45 ջի՛ր , որ անձրևի չբռնուիս ։ Ու
մինչև աստին անդին տեսնուելը՝ եր-
կինքը ամպերով մթընցաւ , և հով
46 կար . ու մեծ անձրև եղաւ ։ Ու
Աքաաբ հեծաւ , Յեզրայէլը գնաց ։
Եւ Տէրոջը ձեռքը Եղիային հետ
եղաւ . ու անիկայ [ր] իր մէջքը
պնդեց , ու մինչև Յեզրայէլին դու-
ռը Աքաաբին առջևէն վազեց ։

## ԳԼ · ԺԹ

1 Եղիան Յեզաբելին սպառնալիքէն վախնա-
լով՝ դէպ 'ի Բերսաբէէ կը փախչի ։ 4 Անա-
պատին մէջ իր կեանքէն զզուած ըլլալով՝
հրեշտակ մը զանիկայ կը մխիթարէ ։ 9 Քո-
րեբի վրայ Աստուած Եղիային կ'երևնայ , ու
զանիկայ կը խրկէ որ Ազայէլը , Յէուն ու Ե-
ղիսէն օծէ ։ 19 Եղիսէ իր բարեկամներէն
զատուելով՝ Եղիային ետևէն կ'երթայ ։

1 Ու Աքաաբ՝ Եղիային բոլոր ըրա-
ծը , ու անոր՝ [ց] բոլոր մարգա-
րէները սրով մեռցընելը Յեզաբէլին
2 պատմեց ։ Ու Յեզաբէլ պատգա-
մաւոր մը խրկեց Եղիային՝ ըսելով .
[ւ] Աստուածները այսպէս՝ ու աւելի
աւելի ընեն ինծի , թէ որ վաղը աս
ատենս քու անձդ անոնց մէկուն
անձին տեղը չդնեմ ։
3 Ու Եղիա † այս բանը տեսնելով՝
ելաւ իր անձին ազատութեանը հա-
մար գնաց , և Յուդայի Բերսաբէէն
մտաւ , ու իր մանչը հոն ձգեց ։
4 Եւ ինքը անապատին մէջ մէկ օ-
րուան ճամբայ գնաց , ու գիհիի մը
տակ նստաւ . և [փ] սրտանց մեռնիլ
ուզեց , ու ըսաւ . Ալ հերիք է ,
ո՜վ Տէր , ա՛ռ իմ հոգիս . քանզի
5 ես իմ հայրերէս լաւ չեմ ։ Ու գի-
հիի մը տակ պառկեցաւ քնացաւ .
և ահա՛ մէկ հրեշտակ մը անոր դը-
պաւ , ու անոր ըսաւ . Ելի՛ր կե՛ր ։
6 Ու Եղիա նայեցաւ , և ահա՛ գլխուն
քովը ‡ մոխիրի տակ եփուած շօթ"
մը ու մէկ կուժ ջուր կար . ու կե-
րաւ խմեց , ու նորէն պառկեցաւ ։
7 Եւ Տէրոջը հրեշտակը դարձաւ երկ-
րորդ անգամ անոր դպաւ , ու ա-
նոր ըսաւ . Ելի՛ր կե՛ր . քանզի || քու
8 երթալու ճամբադ" շատ է ։ Եւ ա-

հ Ղև. ԺԹ. 28 ; Բ Օր. ԺԴ. 1 ։
ձ Հմր 26 ։
ղ Գլ. ԺԹ. 10 ։
ճ Ծն. ԼԲ. 28 ; ԼԵ. 10 ; Դ Թագ. ԺԷ. 34 ։
մ Ղև. Ա. 6, 7, 8 ։
յ Տես Դատ. Զ. 20 ։
ն Հմր 32, 38 ։
շ Ել. Գ. 6 ։
ո Գլ. Ը. 43 ; Դ Թագ. ԺԹ. 19 ; Սաղ. ՁԳ. 18 ։
չ Թու. ԺԶ. 28 ։
պ Ղև. Թ. 24 ; Դատ. Զ. 21 ; Ա Մն. ԻԱ. 26 ; Բ Մն. Է. 1 ։
ջ Հմր 24 ։
ռ Դ Թագ. Ժ. 25 ։
ս Բ Օր. ԺԳ. 5 ; ԺԸ. 20 ։

* Կամ՝ շատ անձրևի ձայն
տ Յակ. Ե. 17, 18 ։
ր Դ Թագ. Դ. 29 ; Թ. 1 ։
ց Գլ. ԺԸ. 40 ։
ւ Հռութ. Ա. 17 ; Գլ. Ի. 10 ; Դ Թագ. Զ. 31 ։
† Կամ՝ վախնալով
փ Թու. ԺԱ. 15 ; Յովն. Դ. 3, 8 ։
‡ Եբր. կայծերու շօթ
|| Եբր. ճամբան քեզմէ

նիկայ ելաւ, կերաւ ու խմեց. և
ան կերակուրին ուժովը [ա]քառասուն
օր ու քառասուն գիշեր գնաց, մին–
չև Քորեբ՝ [բ]Աստուծոյ լեռը հա–
սաւ ։
9 Եւ հոն քարայրը մտաւ, ու գի–
շերը հոն մնաց. և ահա Տէրոջը
խօսքը անոր եղաւ՝ ըսելով. Ո՛վ
10 Եղիա՝ հոս ի՞նչ բան ունիս ։ Ու
անիկայ ըսաւ. [գ]Զօրաց Տէր Աս–
տուծոյն համար մեծ նախանձաւո–
րութիւն ունեցայ. [դ]քանզի Իսրա–
յէլի որդիքը քու ուխտդ թողու–
ցին, քու սեղաններդ փլցուցին,
ու [ե]քու մարգարէներդ սրով մեռ–
ցուցին. ու [զ]մինակ ես մնացեր
եմ, և իմ անձս ալ կը փնտռեն՝
11 որ զանիկայ վերցընեն ։ Ու անոր
ըսաւ. Ելիր, ու [է]լեռը Տէրոջը
առջևը կայնէ ։ Եւ ահա Տէրը
կ'անցնէր. ու Տէրոջը առջևէն
լեռները քակող ու ապառաժները
կոտրող [ը]մեծ ու սաստիկ հով ե–
ղաւ. բայց Տէրը այն հովին մէջը
չէր. և հովին ետևէն գետնաշարժ
եղաւ. բայց Տէրը գետնաշարժին
12 մէջը չէր. Ու գետնաշարժին ետևէն
կրակ եղաւ. բայց Տէրը կրակին մէ–
ջը չէր. և կրակին ետևէն մեղմ ու
13 բարակ ձայն մը կը լսուէր ։ Ու Ե–
ղիա զանիկայ լսածին պէս՝ [թ]իր վե–
րարկուովը երեսը ծածկեց, ու ե–
լաւ քարայրին բերանը կայնեցաւ.
[ժ]Եւ ահա անոր մէկ ձայն մը եկաւ,
ու ըսաւ. Ո՛վ Եղիա՝ հոս ի՞նչ
14 բան ունիս ։ [ի]Ու անիկայ ըսաւ.
Զօրաց Տէր Աստուծոյն համար մեծ
նախանձաւորութիւն ունեցայ.
քանզի Իսրայէլի որդիքը քու ուխտդ
թողուցին, քու սեղաններդ փլցու–
ցին, ու քու մարգարէներդ սրով
մեռցուցին. ու մինակ ես մնացեր
եմ, և իմ անձս ալ կը փնտռեն՝ որ
15 զանիկայ վերցընեն ։ Ու Տէրը ա–
նոր ըսաւ. Գնա՛ քու ճամբադ
դարձիր, և Դամասկոսի անապա–
տին ճամբայէն երթալով՝ [լ]Ազայէ–
լը Ասորւոց վրայ թագաւոր օծէ.
16 Եւ [խ]Նամեսսիի որդին Յէուն Իս–
րայէլի վրայ թագաւոր օծէ. ու
Աբէլմաուլայէն եղող Սափատի որ–
դին [ծ]Եղիսէն՝ քու տեղդ մարգարէ
17 օծէ ։ Եւ [կ]պիտի ըլլայ թէ՝ ով
որ Ազայէլին սուրէն ազատի, Յէուն
պիտի մեռցընէ զանիկայ, ու ով որ
Յէուին սուրէն ազատի, [հ]Եղիսէն
18 պիտի մեռցընէ զանիկայ. [ձ]Բայց ես
Իսրայէլին եօթը հազար մարդ *պա–
հեցի, այսինքն բոլոր անոնք որ Բա–
ղին առջևը ծունկ չոքած չեն,
[ղ]ու զանիկայ բերնով պագած չեն ։
19 Եւ անկէ գնաց ու Սափատի որ–
դին Եղիսէն գտաւ, որ արտ կը

Ն․ ք․ զ․ ք․ իբր 906
ա Ել․ լդ․ 28 ։ բ Օր․ թ․ 9, 18 ։ Մատ․ դ․ 2 ։
բ Ել․ գ․ 1 ։
գ Թուոց իե․ 11, 13 ։ Սաղ․ կթ․ 9 ։
դ Հռով․ ժա․ 8 ։
ե Գլ․ ժը․ 4 ։
զ Գլ․ ժը․ 22 ։ Հռով․ ժա․ 3 ։
է Ել․ իդ․ 12 ։
ը Եզեկ․ ա․ 4 ։ լէ․ 7 ։
թ Ել․ գ․ 6 ։ Ես․ զ․ 2 ։
ժ Համր 9 ։
ի Համր 10 ։
լ Տես Դ Թագ․ ը․ 12, 13 ։
խ Դ Թագ․ թ․ 1—3 ։
ծ Ղուկ․ դ․ 27 ։
կ Դ Թագ․ ը․ 12 ։ թ․ 14 ։ ժ․ 6 ։ ժգ․ 8 ։
հ Տես Ովս․ զ․ 5 ։
ձ Հռով․ ժա․ 4 ։
* Կամ՝ պիտի պահեմ
ղ Տես Ովս․ ժգ․ 2 ։

վարէր, իր առջևը տասներկու
զոյգ եզներ ունենալով, ու ինքը եր–
կոտասաներորդին հետն էր. ու Ե–
ղիա անոր քովէն անցնելով՝ իր վե–
20 րարկուն անոր վրայ ձգեց. Ան ա–
տենը Եղիսէ եզները թողուց, ու
Եղիային ետևէն վազեց, ու ըսաւ.
[մ]Հրաման տուր՝ որ երթամ հայրս ու
մայրս համբուրեմ, ու քու ետևէդ
գամ. ու Եղիա անոր ըսաւ. Գնա՛
ետ դարձիր. քանզի ես քեզի ի՞նչ
21 ըրի ։ Եւ անոր քովէն դարձաւ,
ու եզներուն մէկ զոյգը բռնեց մոր–
թեց, ու եզներուն գործիքներովը
[յ]անոնց միսը եփեց. և ժողովուրդին
տուաւ, ու կերան. և ինքը ելաւ
Եղիային ետևէն գնաց, ու անոր
ծառայութիւն կ'ընէր ։

Ն․ ք․ զ․ ք․ իբր 906
մ Մատ․ ը․ 21, 22 ։ Ղուկ․ թ․ 61, 62 ։
յ Բ Թագ․ իդ․ 22 ։

## ԳԼ․ Ի

1 Բենադադ՝ Աքաաբը իրեն հնազանդեցընելը բաւական չսեպելով՝ Սամարիան կը պաշարէ ։ 13 Մէկ մարգարէի մը խրատովը՝ Ասորիք կը ջարդուին ։ 22 Այն մարգարէին առաջուց Աքաաբին իմացուցածին պէս՝ Ասորիք դաշտերուն ապաւինելով՝ Աֆեկի մէջ անոր դէմ պատերազմելու կու գան ։ 28 Մարգարէին խօսքովը ու Աստուծոյ նախասահմանութեամբը Ասորիք նորէն՝ կը զարնուին ։ 31 Ասորւոց նուաճելէն ետև՝ Աքաաբ մէկ դաշինքով մը Բենադադը կը խրկէ ։ 35 Մարգարէ մը կալանաւորի մը առակով Աքաաբին դատաստանը իրեն կտրել տալով՝ անոր դէմ եղած Աստուծոյ դատաստանը կ'իմացընէ ։

1 Ու Ասորւոց Բենադադ թագաւորը
իր բոլոր զօրքերը ժողվեց. և իր
հետը երեսունըերկու թագաւոր
կար. ու ձիերով ու կառքերով ե–
լաւ Սամարիան պաշարեց, և անոր
2 հետ պատերազմ ըրաւ ։ Ու Իս–
րայէլի Աքաաբ թագաւորին դես–
3 պաններ խրկեց քաղաքին մէջը, Եւ
անոր ըսաւ. Բենադադ այսպէս
կ'ըսէ. Քու արծաթդ ու ոսկիդ
իմս է, ու քու կնիկներդ ու գեղե–
4 ցիկ որդիներդ իմս են ։ Եւ Իսրա–
յէլի թագաւորը պատասխան
տուաւ ու ըսաւ. Ո՛վ տէր իմ թա–
գաւոր՝ քու ըսածիդ պէս՝ ես ալ
քուկդ եմ ու իմ ամէն ունեցածս
ալ ։
5 Ու դեսպանները նորէն եկան ը–
սին. Բենադադ այսպէս կ'ըսէ.
Ես քեզի մարդ խրկեցի ու ըսի որ
քու արծաթդ, քու ոսկիդ, քու
կնիկներդ ու քու որդիներդ ինծի
6 տաս. Բայց վաղը աս ատենս իմ
ծառաներս քեզի պիտի խրկեմ. և
քու տունդ, ու քու ծառաներուդ
տուները աղէկ մը աչքէ պիտի ան–
ցընեն. և քու աչքերուդ առջևը
պատուական սեպուած բոլոր բա–
ները †ձեռքովնին պիտի առնեն ։
7 Ան ատենը Իսրայէլի թագաւորը
երկրին բոլոր ծերերը կանչեց՝ ու ը–

901
† Եբր․ ձեռքերնուն մէջ դնելով

Ն. Ք. Ծ. 901 սաւ . Հիմա գիտցէ՛ք ու տեսէ՛ք ,
որ ասիկայ չարութիւն կ'ուզէ ընելու
վասն զի իմ կիներուս , ու որդի-
ներուս , ու արծաթիս և ոսկիիս
համար ինծի մարդ խրկեց . ու ես
8 անոր չէ չըսի ։ Եւ բոլոր ծերերը
ու բոլոր ժողովուրդը անոր ըսին .
Ականջ մի դներ , ու յանձնառու
9 մի՛ ըլլար ։ Անիկայ ալ Բենադա-
դին դեսպաններուն ըսաւ . Իմ
թագաւոր տիրոջս ըսէք . Առջի
անգամին քու ծառայիդ ինչ հրա-
ման որ խրկեցիր , անիկայ պիտի ը-
նեմ , բայց աս բանը չեմ կրնար ը-
նել . ու դեսպանները գացին , և
աս պատասխանը տարին անոր ։
10 Ու Բենադադ մարդ խրկեց անոր՝
ա Գլ. ԺԹ. 2 ու ըսաւ . ա Աստուածները ինծի
այսպէս՝ ու աւելի աւելի ընեն , թէ
բ Եզ. Ժա. 8, Դատ. Զ. 10 որ Սամարիայի հողը բ իմ ետեւէս
եկող բոլոր զօրացս ափերուն օգ-
11 տէ ։ Եւ Իսրայէլի թագաւորը
պատասխան տուաւ , ու ըսաւ .
Անոր այսպէս ըսէք . Իր զէնքը
մէջքը կապողը՝ զէնքը մէջքէն
12 հանողի պէս չպարծի ։ Ու ա-
նիկայ իր հետը եղող թագաւորնե-
գ Հմր 16 րուն հետ վրաններու մէջ գ կը խը-
մեր , և աս խօսքը լսածին պէս՝ իր
ծառաներուն ըսաւ . Պատրաստուեցէ՛
շարուեցէ՛ք . ու քաղաքին դիմացը
պատրաստուելով շարուեցան ։
13 Եւ ահա մէկ մարգարէ մը Իսրա-
յէլի Աքաաբ թագաւորին մօտե-
ցաւ՝ ու ըսաւ . Տէրը այսպէս կ'ը-
սէ . Բոլոր աս մեծ բազմութիւնը
դ Հմր 28 տեսա՞ր . ահա դ ես այսօր անիկայ
քու ձեռքդ պիտի տամ , որ գիտ-
14 նաս թէ Տէրը ես եմ ։ Եւ Աքաաբ
ըսաւ . Որո՞ւն ձեռքովը . ու անիկայ
ըսաւ . Տէրը այսպէս կ'ըսէ . Գաւա-
ռաց իշխաններուն մանչերուն ձեռ-
քովը ։ Եւ ըսաւ . Պատերազմը ո՞վ
15 սկսի . ու անիկայ ըսաւ . Դուն ։ Եւ
գաւառաց իշխաններուն մանչերը
համրեց . ու երկու հարիւր երսուն-
ուերկու հոգի էին . և անոնցմէ
ետքը բոլոր ժողովուրդը՝ բոլոր Իս-
րայէլի որդիքը համրեց . ու եօթը
16 հազար հոգի էին ։ Եւ ասոնք կէս-
օրին ելան . բայց Բենադադ ինքը
ու անոր օգնական թագաւորները ,
ան երսունուերկու թագաւորները
ե Հմր 12, Գլ. Ժզ. 9 վրաններու մէջ ե խմելով կը գինով-
17 նային ։ Եւ առաջ՝ գաւառաց իշ-
խաններուն մանչերը ելան . ու Բե-
նադադ մարդիկներ խրկեց , որոնք
անոր պատմեցին թէ Սամարիայէն
18 մարդիկներ ելան ։ Ու անիկայ ը-
սաւ . Թէ որ անոնք խաղաղութեան
համար ելան , զանոնք ողջ բռնե-
ցէք , ու թէ որ պատերազմելու ե-
19 լան , զանոնք ողջ բռնեցէք ։ Եւ

աս գաւառաց իշխաններուն ման- Ն. Ք. Ծ. 901
չերը՝ ու անոնց ետեւէն գացող զօր-
20 քը՝ քաղաքէն դուրս ելան . Եւ
ամէն մարդ իր * դիմացը եկողը * Եբր. մարդը
զարկաւ , ու Ասորիները փախան .
և Իսրայէլը զանոնք հալածեց . ու
Ասորւոց Բենադադ թագաւորը ձիի
վրայ հեծած՝ քանի մը ձիաւորներով
21 ազատեցաւ ։ Եւ Իսրայէլի թագա-
ւորը ելաւ , ու ձիերը ու կառքերը
զարկաւ , ու Ասորիները մեծ կոտո-
րածով մը զարկաւ ։
22 Եւ մարգարէն Իսրայէլի թագա-
ւորին մօտեցաւ , ու անոր ըսաւ .
Գնա՛ ուժովցի՛ր , ու գիտցի՛ր ու
տե՛ս թէ ինչ պիտի ընես . զ Վասն զ Բ Թագ. Ժա. 1
զի եկող տարի Ասորւոց թագաւորը
քու վրադ պիտի ելլէ ։
23 Եւ Ասորւոց թագաւորին ծա-
ռաները անոր ըսին . Անոնց աս-
տուածները լեռներու աստուածներ
են , անոր համար մեզի յաղթեցին .
բայց թէ որ անոնց հետ դաշտի մէջ
պատերազմինք , անտարակոյս ա-
24 նոնց կը յաղթենք ։ Ուրեմն աս
բանը ըրէ . թագաւորներուն ամէն
մէկը իր տեղէն հանէ' , ու անոնց
25 տեղը նախարարներ դիր . Եւ դուն
քեզմէ կորսուած զօրքին չափ զօրք ,
ու ձիերուն չափ ձիեր , ու կառքե-
րուն չափ կառքեր † պատրաստէ † Եբր. համրէ
քեզի , և անոնց հետ դաշտի մէջ
պատերազմինք . անտարակոյս ա-
նոնց կը յաղթենք . ու անիկայ ա-
նոնց խօսքը մտիկ ընելով՝ այնպէս
26 ըրաւ ։ Ու հետեւեալ տարին՝ Բենա- 900
դադ՝ Ասորիները համրեց , ու է Ա- է Յես. Ժգ. 4
փէկ ելաւ Իսրայէլի հետ պատերազ-
27 մելու համար ։ Իսրայէլի որդիքն
ալ համրուեցան ու ‡ պատրաս- ‡ Կամ՝ պաշար առին
տուեցան , ու զանոնք դիմաւորելու
գացին . և Իսրայէլի որդիքը անոնց
դիմացը՝ այծերու երկու երամակ-
ներու պէս բանակ կազմեցին . բայց
Ասորիները երկիրը լեցուցին ։
28 Եւ Աստուծոյ մարդը եկաւ , ու
Իսրայէլի թագաւորին հետ խօսե-
ցաւ՝ ու ըսաւ . Տէրը այսպէս կ'ը-
սէ . Որովհետեւ Ասորիները ըսին
թէ՝ Եհովան լեռներու Աստուած
է , ու հովիտներու Աստուած չէ ,
ասոր համար ը բոլոր աս մեծ բազ- ը Հմր 13
մութիւնը քու ձեռքդ պիտի մատ-
նեմ , որ գիտնաք թէ ես եմ Տէրը ։
29 Եւ իրարու դէմ եօթը օր բանակե-
ցան . ու եօթներորդ օրը պատե-
րազմ եղաւ , և Իսրայէլի որդիքը
մէկ օրուան մէջ՝ Ասորիներէն հա-
րիւր հազար հետեւակ զօրք զարկին .
30 Ու մնացածները Ափէկ քաղաքը
փախան . և այն մնացած քսանու-
եօթը հազար մարդիկներուն վրայ
պարիսպը ինկաւ ։ Ու Բենադադ

Ն․ Ք․ ՉՃ․ 900

փախաւ, ու քաղաքին մէջ՝ ներ-
նեակէ սենեակ մտաւ։
31 Եւ անոր ծառաները անոր ը- (Բ Գլ․ Իբ․ 25)
սին. Ահա մենք լսեր ենք որ Իս-
րայէլի տանը թագաւորները ողոր-
մած թագաւորներ են. հիմա ‡ մէջ- (‡ Տես Ծն․ ԼԷ․ 34)
քերնիս քուրձեր, ու գլուխնիս
չուաններ դնենք, և Իսրայէլի թա-
գաւորին առջևը ելլենք, դուցէ քու
32 անձդ ապրեցընէ։ Ու մէջքերնին
քուրձեր, ու գլուխնին չուաններ
կապեցին, և Իսրայէլի թագաւորին
գացին ու ըսին. Քու ծառադ Բե-
նադադը կ'ըսէ. Կ'աղաչեմ, թող
անձս ապրի։ Ու անիկայ ըսաւ.
Տակաւին ո՞ղջ է. անիկայ իմ եղ-
33 բայրս է։ Եւ ան մարդիկները ա-
սիկայ յաջողութիւն սեպելով՝ ա-
նոր բերնէն աս խօսքը առածնուն
պէս, շուտով պատասխան տուին.
Քու եղբայրդ Բենադադը հոս է։
Ու անիկայ ըսաւ. Գացէ՛ք զանի-
կայ բերէ՛ք։ Ու երբոր Բենադադը
անոր եկաւ, զանիկայ իր կառքին
34 մէջը առաւ։ Ան ալ անոր ըսաւ.
§ Իմ հօրս քու հօրմէդ առած քա- (§ Գլ․ ԺԵ․ 20)
ղաքները ետ տամ, ու դուն Դա-
մասկոսի մէջ քեզի համար հրապա-
րակներ ունենաս, ինչպէս որ իմ
հայրս Սամարիայի մէջ ունեցաւ։
Ու անիկայ ըսաւ. Ես ալ աս դա-
շինքով քեզ կ'արձակեմ. ուստի
անոր հետ դաշնակցութիւն ըրաւ,
ու զանիկայ արձակեց։
35 Եւ ‖ մարգարէից որդիներուն մէ- (‖ Դ Թագ․ Բ․ 3, 5, 7, 15)
կը ¶ Տէրոջը խօսքովը իր ընկերին (¶ Գլ․ ԺԳ․ 17, 18)
ըսաւ. Շնորհք ըրէ, զիս զարկ. ու
ան մարդը անիկայ զարնել չուզեց։
36 Եւ անիկայ ըսաւ անոր. Տէրոջը
խօսքին հնազանդութիւն չընելուդ
համար, ահա իմ քովէս գացածիդ
պէս, քեզ մէկ առիւծ մը պիտի
մեռցընէ։ Ու անիկայ անոր քովէն
գնաց, ու մէկ առիւծ մը ☩ զանիկայ (☩ Գլ․ ԺԳ․ 24)
37 գտաւ, ու մեռցուց։ Ետքը անի-
կայ մէկ ուրիշ մարդ մը գտաւ, ու
անոր ըսաւ. Շնորհք ըրէ, զիս
զարկ. ու ան մարդը զանիկայ զար-
կաւ, ու զարնելով վիրաւորեց։
38 Եւ ան մարգարէն գնաց ճամբուն
վրայ թագաւորին սպասեց, ու չը-
ճանչցուելու համար աչքերուն վը-
39 րայ * ծածկոց մը" դրաւ։ Ու ‖ երբ- (* Կամ՝ մոխիր) (‖ Տես Բ Թագ․ ԺԲ․ 1, ...)
որ թագաւորը անկէ կ'անցնէր,
թագաւորին աղաղակելով ըսաւ.
Քու ծառադ պատերազմին մէջը
գնաց, և ահա մէկ մարդ մը պատե-
րազմէն դուրս ելլելով, ինծի մարդ
մը բերաւ, ու ըսաւ. Աս մարդը
պահէ. թէ որ ասիկայ մէկ կեր-
պով մը կորսուելու ըլլայ, ¶ քու (¶ Դ Թագ․ Ժ․ 24)
անձդ անոր անձին տեղը պիտի ըլ-
լայ, կամ տաղանդ մը արծաթ
40 պիտի † վճարես։ Ու երբոր ծառադ (Ն․ Ք․ ՉՃ․ 900)
աստին անդին գործքով զբաղեր
էի, անիկայ կորսուեցաւ։ Եւ Իս- († Եբր․ կշռես)
րայէլի թագաւորը անոր ըսաւ.
Քու դատաստանդ այդպէս է, ինչ-
պէս որ դուն քու բերնովդ վճռեցիր։
41 Ու անիկայ շուտով մը ծածկոցը
աչքերուն վրայէն հանեց. ու Իս-
րայէլի թագաւորը իմացաւ որ ա-
42 նիկայ մարգարէներէն մէկն է։ Եւ
անիկայ ըսաւ անոր. Տէրը այսպէս
կ'ըսէ. Ս Որովհետև դուն իմ նզո- (Ս Գլ․ Իբ․ 31—37)
ված մարդս քու ձեռքէդ ազատ
արձակեցիր, անոր համար քու
անձդ անոր անձին տեղը, ու քու
ժողովուրդդ անոր ժողովուրդին
43 տեղը պիտի ըլլայ։ Եւ Իսրայէլի
թագաւորը ‖ սիրտը կոտրած ու (‖ Գլ․ ԻԱ․ 4)
նեղացած՝ իր տունը դարձաւ, ու
Սամարիա եկաւ։

## ԳԼ․ ԻԱ

1 Աքաաբ՝ չկրնալով Նաբովթին այգին ձեռք բերել, կը տրտմի։ 5 Յեզաբէլ նամակներ գրելով Նաբովթին դէմ, անիկայ հայհոյութեան մեղքով կ'ամբաստանուի, ու կը դատապարտուի։ 15 Աքաաբ իրեն կ'առնէ ան այգին։ 17 Եղիա՝ Աքաաբին ու Յեզաբէլին դէմ Աստուծոյ դատաստանները կը ծանուցանէ։ 25 Չար Աքաաբը կ'ապաշխարէ. աս պատճառով Աստուած անոր դատաստանը կ'ուշացընէ։

1 Եւ աս բաներէն ետքը՝ Յեզրայէ-
լացի Նաբովթը Սամարիայի Ա-
քաաբ թագաւորին պալատին քո-
վը Յեզրայէլի մէջ այգի մը ունէր։
2 Ու Աքաաբ Նաբովթին հետ խօսե- (899)
ցաւ ու ըսաւ. Քու * այգիդ ինծի (* Դ Թագ․ Ը․ 14)
տուր, որ ինծի բանջարի պարտէզ
ըլլայ, քանզի իմ տանս մօտ է. և
անոր տեղը՝ անկէ աղէկ այգի մը
տամ քեզի. կամ թէ որ կ'ուզես,
անոր գինը ստակով վճարեմ քեզի։
3 Ու Նաբովթ՝ Աքաաբին ըսաւ.
Տէրը ինծի չցուցընէ՝ ‡ որ իմ հայ- (‡ Ղև․ ԻԵ․ 23. Թուոց ԼԶ․ 7. Եզեկ․ ԽԶ․ 18)
րերուս ժառանգութիւնը քեզի
տամ։
4 Եւ Աքաաբ՝ Յեզրայէլացի Նա-
բովթին ըսած խօսքին համար՝ որ
ըսաւ թէ՝ Իմ հայրերուս ժառան-
գութիւնը քեզի չեմ տար, սիրտը
կոտրած ու նեղացած իր տունը
գնաց, և իր անկողինին վրայ
պառկեցաւ, ու երեսը դարձուց,
5 ու հաց չկերաւ։ Եւ անոր կնիկը
Յեզաբէլ անոր քովը գնաց՝ ու
ըսաւ. Ինչո՞ւ համար սիրտդ այդ-
պէս նեղացած է, ու հաց չես ու-
6 տեր։ Եւ անիկայ ըսաւ անոր.
Վասն զի Յեզրայէլացի Նաբովթին
հետ խօսեցայ՝ ու անոր ըսի. Քու
այգիդ ինծի ստակով տուր. կամ
թէ որ կը հաճիս, անոր տեղը քե-
զի ուրիշ այգի մը տամ. բայց ա-
նիկայ՝ Իմ այգիս քեզի չեմ տար՝

Ն. Ք. ԴՋ.
899

7 ըսաւ ։ Ան ատենը անոր կնիկը Յե-
զաբէլ անոր ըսաւ . Դուն հիմա
Իսրայէլի վրայ աղէկ թագաւո-
րութիւն պիտի ընես . ելի՛ր՝ հաց
կեր . ու սիրտդ թող զուարճա-
նայ . Յեզրայելացի Նաբովթին
այգին ես քեզի տամ ։
8 Եւ անիկայ Աքաաբին անունովը
նամակներ գրեց , ու անոր
կնիքովը կնքեց , և ան նամակները
Նաբովթին քաղաքակից ծերերուն
9 ու ազնուականներուն ղրկեց ։ Ու
նամակներուն մէջը այսպէս գրեր
էր . Ծոմապահութիւն քարոզե-
ցէք , ու Նաբովթը ժողովուրդին
10 գլուխը նստեցուցէ՛ք . Եւ անոր
դիմացը երկու անօրէն մարդիկներ
նստեցուցէք , որոնք անոր համար
վկայութիւն տան ու ըսեն թէ՝
Դուն Աստուծոյ ու թագաւորին
դէմ հայհոյութիւն ըրիր . ու զա-
նիկայ հանեցէ՛ք , ու քարկոծե-
ցէ՛ք որ մեռնի ։
11 Եւ անոր քաղաքակիցները՝ անոր
քաղաքին մէջը բնակող ծերերը ու
ազնուականները՝ Յեզաբէլին իրենց
ապսպրածին պէս ըրին , ինչպէս որ
անոր խրկած նամակներուն մէջը
12 գրուած էր ։ Անոնք ծոմապա-
հութիւն քարոզեցին . և Նաբով-
թը ժողովուրդին գլուխը նստե-
13 ցուցին ։ Ու երկու անօրէն մարդիկ-
ներ գացին անոր դիմացը նստան .
և ան անօրէն մարդիկները ժողո-
վուրդին առջևը Նաբովթին համար
վկայութիւն տուին ու ըսին թէ՝
Նաբովթը Աստուծոյ ու թագաւո-
րին դէմ հայհոյութիւն ըրաւ .
Ուստի զանիկայ քաղաքէն դուրս
հանեցին , և քարերով քարկոծե-
14 ցին , ու մեռաւ ։ Ու Յեզաբէլին
լուր խրկեցին՝ ըսելով . Նաբովթը
քարկոծուեցաւ ու մեռաւ ։
15 Ու երբոր Յեզաբէլ Նաբովթին
քարկոծուիլը ու մեռնիլը լսեց ,
Յեզաբէլ Աքաաբին ըսաւ . Ելի՛ր
ժառանգէ Յեզրայելացի Նաբով-
թին այգին , որն որ ինքը քեզի
ստակով տալ չուզեց . քանզի Նա-
բովթը ողջ չէ , հապա մեռաւ ։
16 Ու երբոր Աքաաբ՝ Նաբովթին
մեռնիլը լսեց , Աքաաբ ոտք ելաւ
որ Յեզրայելացի Նաբովթին այ-
գին իջնէ , ու զանիկայ ժառանգէ ։
17 Եւ Տէրոջը խօսքը Թեզբացի Ե-
18 ղիային եղաւ՝ ըսելով . Ելի՛ր ,
Սամարիա բնակող Իսրայէլի Ա-
քաաբ թագաւորը դիմաւորելու
իջի՛ր , ահա անիկայ Նաբովթին
այգիին մէջն է , ուր որ իջեր է
19 զանիկայ ժառանգելու համար . Ու
անոր խօսիս ու ըսես . Տէրը այս-
պէս կ'ըսէ . Մեռցուցի՞ր , ու կը
ժառանգե՞ս ալ . ու նաև անոր
ըսես . Տէրը այսպէս կ'ըսէ . Ան
տեղը՝ որ շուները Նաբովթին ա-
րիւնը լափեցին , հոն շուները քու
20 արիւնդ ալ պիտի լափեն ։ Եւ
Աքաաբ՝ Եղիային ըսաւ . Ո՛վ իմ
թշնամիս , զիս գտա՞ր . ու անիկայ
ըսաւ . Գտայ . որովհետև դուն
քեզ ծախեցիր Տէրոջը առջևը չա-
21 րութիւն ընելու համար . Ահա՛ ես
քու վրադ չարիք պիտի բերեմ , ու
*քեզ հալածելով" պիտի ջնջեմ , և
Աքաաբին բոլոր էրիկ մարդիկները
ու Իսրայէլի մէջ գոցուածը ու
ձգուածը պիտի կորսնցընեմ .
22 Եւ քու տունդ՝ Նաբատի որդւոյն
Յերոբովամին տանը պէս , ու
Աքիայի որդւոյն Բաասային տա-
նը պէս պիտի ընեմ . որովհետև զիս
բարկացուցիր , ու Իսրայէլին մեղք
23 գործել տուիր ։ Եւ Տէրը Յեզա-
բէլին համար ալ խօսեցաւ ու ը-
սաւ . Յեզաբէլը՝ Յեզրայելի պարս-
պին քովը շուները պիտի ուտեն ։
24 Աքաաբէն՝ քաղաքի մէջ մեռնո-
ղը՝ շուները պիտի ուտեն , ու դաշ-
տի մէջ մեռնողը՝ երկինքի թռչ-
չունները պիտի ուտեն ։
25 Բայց Աքաաբին պէս բնաւ ու-
րիշ մը եղած չէր , որ զինքը ծա-
խէ Տէրոջը առջևը չարութիւն ընե-
լու համար , որն որ անոր կնիկը
26 Յեզաբէլ գլխէ հանեց ։ Ու անի-
կայ կուռքերուն ետևէն երթալով՝
շատ գարշելի եղաւ , այն բոլոր Ա-
մօրհացւոց ըրածները ըրաւ , որոնք
Տէրը Իսրայէլի որդւոցը առջևէն
վռնտեց ։
27 Եւ Աքաաբ աս խօսքերը լսածին
պէս՝ իր հանդերձները պատռեց , ու
մարմինոյն վրայէն քուրձ հագաւ ,
ու ծոմ պահեց . և քուրձով կը
պառկէր , ու կամաց կը քալէր ։
28 Եւ Տէրոջը խօսքը Թեզբացի Եղիա-
յին եղաւ՝ ըսելով . Կը տեսնե՞ս որ
Աքաաբը իմ առջևս խոնարհու-
թիւն կ'ընէ . անոր իմ առջևս խո-
նարհութիւն ընելուն համար՝ անոր
օրերուն մէջ ան չարիքը պիտի չը-
բերեմ . անոր որդւոյն օրերը՝ ան
չարիքը անոր տանը վրայ պիտի բե-
րեմ ։

## ԳԼ. ԻԲ

1 Աքաաբ սուտ մարգարէներէն խաբուելով՝ Միքիային ըսածին պէս՝ Ռամովթ Գաղաադի մէջ կը սպաննուի ։ 37 Շուները անոր արիւնը կը լափեն . ու Ոքոզիա անոր տեղը կը յաջորդէ ։ 41 Յովսափատին բարի թագաւորութիւնը . 45 անոր գործքերը ։ 50 Յովրամ անոր տեղը կը յաջորդէ ։ 51 Ոքոզիային դէշ վարմունքը ։

1 Եւ իրեք տարի անցաւ , որ Ասո-
րիներուն ու Իսրայէլին մէջը
2 պատերազմ չեղաւ ։ Ու երրորդ

Ն. Ք. ԴՋ. 899
Բ Գլ. ԻԲ. 38 ։
Գ Ել. ԻԲ. 28 ։ Ղև. ԻԴ. 15. 16 ։ Գործ. Զ. 11 ։
Դ Ղև. ԻԴ. 14 ։
Ե Ես. ԾԸ. 4 ։
Զ Տե՛ս Դ Թագ. Թ. 26 ։
Է Սաղ. Թ. 12 ։
Ը Գլ. ԺԳ. 32 ։ Բ Մն. ԻԲ. 9 ։
Ծ Գլ. ԺԸ. 17 ։
Է Դ Թագ. ԺԷ. 17 ։ Հռով. Է. 14 ։
Ը Գլ. ԺԴ. 10 ։ Դ Թագ. Թ. 8 ։
* Կամ՝ քու սերունդդ , Եբր. քու ետևէդ
Ի Ա Թագ. ԻԵ. 22 ։
Ժ Գլ. ԺԴ. 10 ։
Ի Գլ. ԺԵ. 29 ։
Հ Գլ. ԺԶ. 3. 11 ։
Յ Դ Թագ. Թ. 36 ։
Ղ Գլ. ԺԴ. 11 ։ ԺԶ. 4 ։
Ճ Գլ. ԺԶ. 30 , 33 ։
Մ Գլ. ԺԶ. 31 ։
Յ Ծն. ԺԵ. 16 ։ Դ Թագ. ԻԱ. 11 ։
Ն Ծն. ԼԷ. 34 ։
Շ Դ Թագ. Թ. 25 ։

Ն. Ք. ՉՂԷ.
897

ա Բ Մն. ԺԸ. 2, Ա.
բ Եբր. Գիտ.
գ Բ Օր. Դ. 43.
դ Դ Թագ. Գ. 7.
ե Գր. ԺԸ. 19.
զ Դ Թագ. Գ. 11.

տարին՝ ա Յուդայի Յովսափատ
թագաւորը Իսրայէլի թագաւորին
3 իջաւ ։ Եւ Իսրայէլի թագաւորը
իր ծառաներուն ըսաւ. բ Գիտէք
որ գ Ռամովթ գաղաադը մերն է ,
ու մենք զանիկայ Ասորւոց թագա-
ւորին ձեռքէն առնելու հոգ չենք
4 տանիր ։ Եւ Յովսափատին ըսաւ .
ա ինծի հետ Ռամովթ գաղաադը պա-
տերազմելու կ'երթա՞ս ։ Ու Յովսա-
փատ՝ Իսրայէլի թագաւորին ըսաւ .
դ Ես քեզի պէս եմ. իմ ժողովուրդս՝
քու ժողովուրդիդ պէս , ու իմ
ձիերս՝ քու ձիերուդ պէս են ։
5 Եւ Յովսափատ՝ Իսրայէլի թա-
գաւորին ըսաւ . Հիմա Տէրոջը
6 խօսքը փնտռէ ։ Ու Իսրայէլի թա-
գաւորը ե մարգարէները ժողվեց ,
որոնք չորս հարիւրի չափ մարդիկ
էին , ու անոնց ըսաւ . Ռամովթ
գաղաադի վրայ պատերազմելու եր-
թա՞մ , թէ ետ կենամ . ու անոնք
ըսին . Գնա՛ . վասն զի Տէրը զանիկայ
թագաւորին ձեռքը պիտի տայ ։
7 Եւ զ Յովսափատ ըսաւ . Ա՞ս տեղս
Տէրոջը ուրիշ մարգարէ մըն ալ
չկա՞յ , որ անոր հարցընենք ։ Ու Իս-
րայէլի թագաւորը Յովսափատին ը-
սաւ . Կայ մէկ ուրիշ մարդ մըն ալ ,
որուն միջոցովը կրնանք Տէրոջը հար-
ցընել . բայց ես զանիկայ կ'ատեմ .
քանզի ինծի համար աղէկ մարգա-
րէութիւն չըներ , հապա գէշ . ա-
նունը Յեմլայի որդին Միքիան է ։
8 Եւ Յովսափատ ըսաւ . Թագաւորը
այդպէս չըսէ ։
9 Ու Իսրայէլի թագաւորը ներքի-
նի մը կանչեց , ու ըսաւ . Յեմլայի
որդին Միքիան շուտով հոս բեր ։
10 Եւ Իսրայէլի թագաւորը ու Յու-
դայի Յովսափատ թագաւորը Սա-
մարիայի դրանը առջեւ հրապարա-
կին մէջ՝ ամէն մէկը թագաւորական զգ-
գեստներ հագած՝ իր աթոռին վրայ
նստեր էր . ու բոլոր մարգարէնե-
րը անոնց առջեւը մարգարէութիւն
11 կ'ընէին ։ Եւ Քանանայի որդին
Սեդեկիան իրեն երկաթէ եղջիւրներ
շինեց , ու ըսաւ . Տէրը այսպէս
կ'ըսէ . Ասորիները ասոնցմով պիտի
զարնես , մինչեւ որ զանոնք բնաջինջ
12 ընես ։ Բոլոր մարգարէներն ալ
այնպէս կը մարգարէանային ու կ'ը-
սէին . Ռամովթ գաղաադը ելի՛ր ,
ու յաջողութիւն պիտի ունենաս ,
և Տէրը զանիկայ թագաւորին ձեռ-
քը պիտի տայ ։
13 Ու Միքիան կանչելու գացող
մարդը խօսեցաւ անոր՝ ըսելով . Ա-
հա ասոնք մարգարէները մէկ բերնով
թագաւորին համար բարութիւն
խօսեցան . թող քու խօսքդ ալ
անոնց մէկուն խօսքին պէս ըլլայ .
14 ու բարութիւն խօսէ ։ Իսկ Միքիա
ըսաւ . Տէրը կենդանի է որ , է Տէ-
րը ինծի ինչ որ ըսէ , ան պիտի խօ-
սիմ ։
15 Ու երբոր անիկայ թագաւորին
եկաւ , թագաւորը անոր ըսաւ .
Ո՛վ Միքիա , Ռամովթ գաղաադը
պատերազմելու երթա՞նք , թէ ետ
կենանք ։ Եւ անիկայ ըսաւ անոր .
Ելի՛ր , ու յաջողութիւն պիտի ու-
նենաս , ու Տէրը զանիկայ թագա-
16 ւորին ձեռքը պիտի տայ ։ Եւ թա-
գաւորը անոր ըսաւ . Մինչեւ քանի՞
անգամ երդմնցընեմ քեզ , որ Տէ-
րոջը անունովը ճշմարիտը միայն
17 խօսիս ինծի ։ Ու անիկայ ըսաւ .
Բոլոր Իսրայէլը ը հովիւ չունեցող
ոչխարներու պէս լեռներու վրայ
ցրուած տեսայ . և Տէրը ըսաւ . Ա-
սոնք տէր չունին . ամէն մարդ խա-
ղաղութեամբ թող իր տունը
18 դառնայ ։ Եւ Իսրայէլի թագաւորը
Յովսափատին ըսաւ . Քեզի չըսի՞
որ անիկայ ինծի համար աղէկ մար-
գարէութիւն չըներ , հապա գէշ ։
19 Ու Միքիա ըսաւ . Ուրեմն Տէրոջը
խօսքը մտիկ ըրէ . թ Տէրը իր աթո-
ռին վրայ նստած տեսայ , ժ ու եր-
կինքի բոլոր զօրքերը անոր բոլոր-
տիքը՝ աջ կողմը ու ձախ կողմը
20 կայներ էին . Եւ Տէրը ըսաւ . Ա-
քաաբը ո՞վ կրնայ խաբել , որ Ռա-
մովթ գաղաադը ելլէ , ու կորսուի .
ու մէկը այսպէս՝ ու մէկալը այն-
21 պէս ըսաւ ։ Ու մէկ ոգի մը ելաւ ,
և Տէրոջը առջեւը կայնեցաւ , ու ը-
սաւ . Զանիկայ ես կը խաբեմ ։
22 Ու Տէրը անոր ըսաւ . Ի՞նչ միջո-
ցով ։ Եւ անիկայ ըսաւ . Ելլեմ ,
ու անոր բոլոր մարգարէներուն բե-
րանը սուտ ոգի ըլլամ . ու Տէրը ա-
նոր ըսաւ . ժա Դուն պիտի խաբես ,
ու պիտի յաջողիս . ելի՛ր ու այն-
23 պէս ըրէ ։ ժբ Եւ հիմա ահա Տէրը աս
քու բոլոր մարգարէներուդ բերանը
սուտ ոգի դրեր է . բայց Տէրը
քեզի համար չարիք խօսեցաւ ։
24 Ան ատենը Քանանայի որդին
Սեդեկիան մօտեցաւ , ու Միքիային
ծնօտին զարկաւ , ու ըսաւ . ժգ Տէ-
րոջը Հոգին ի՞նչպէս իմ քովէս ե-
լաւ՝ քեզի հետ խօսելու համար ։
25 Եւ Միքիա ըսաւ . Դուն ալ պիտի
տեսնես՝ ան օրը որ պահուելու հա-
մար ժդ սենեակէ սենեակ մտնես ։
26 Ու Իսրայէլի թագաւորը ըսաւ .
Միքիան առ , ու զանիկայ Ամոն
քաղաքապետին՝ և թագաւորի որ-
27 դւոյն Յովասին տար , Ու ըսէ .
Թագաւորը այսպէս կ'ըսէ . Ասի-
կայ բանտը դրէք , ու մինչեւ որ ես
խաղաղութեամբ դառնամ , զանի-
կայ նեղութեան հացով ու նեղու-

Ն. Ք. ՉՂԷ.
897

է Թուե. ԻԲ. 38.
ը Մատ. Թ. 36.
թ Ես. Զ. 1. Դան. Է. 9.
ժ Յոբ. Ա. 6. Բ. 1. Սաղ. ՃԳ. 20, 21. Դան. Է. 10. Մատ. ԺԸ. 10. Եբր. Ա. 7, 14.
ժա Դատ. Թ. 23. Յոբ. ԺԲ. 16. Եզեկ. ԺԴ. 9. Բ Թես. Բ. 11.
ժբ Եզեկ. ԺԴ. 9.
ժգ Բ Մն. ԺԸ. 23.
ժդ Դւ. Ի. 30.

Ն․ Ք․ ՉՔ․ 897

ծ Թու․ Ժզ․ 29 ։ բ Օր․ Ժբ․ 20 ։ 21 ։ 22 ։

28 թեան ջրով կերակրեցէք ։ Եւ
Միքիա ըսաւ․ Թէ որ բնաւ խա-
ղաղութեամբ դառնաս, ծՏէրը
ինծմով խօսած չըլլայ․ ու ըսաւ․
Ո՛վ ժողովուրդներ՝ ամէնքդ լսե-
ցէք ։
29 Եւ Իսրայէլի թագաւորը ու Յու-
դայի Յովսափատ թագաւորը՝ Ռա-
30 մովթ Գաղաադը ելան ։ Ու Իս-
րայէլի թագաւորը Յովսափատին
ըսաւ․ Կերպարանքս պիտի փոխեմ,
ու յնդէս պատերազմի պիտի մըտ-
նեմ․ բայց դուն քու հագուստդ
հագիր․ և Իսրայէլի թագաւորը
եիր կերպարանքը փոխեց, ու պա-
31 տերազմին մէջը մտաւ ։ Եւ Ասո-
րւոց թագաւորը իր երսուներկու
կառապետներուն պատուիրեց ու
ըսաւ․ Պզտիկի կամ մեծի հետ մի՛
պատերազմիք, բայց միայն Իսրա-
32 յէլի թագաւորին հետ ։ Ու երբոր
կառապետները Յովսափատը տե-
սան, Իսրայէլի թագաւորը ասիկայ
է՝ ըսելով, անոր վրայ պատերազ-
մելու դացին․ և Յովսափատ հաղա-
33 ղակեց ։ Ու երբոր կառապետները
տեսան որ անիկայ Իսրայէլի թա-
գաւորը չէ, անկէ ետ դարձան ։
34 Եւ մարդուն մէկը *ուժով մը իր
աղեղը քաշեց, ու Իսրայէլի թա-
գաւորը †զրահին օղակներուն մէ-
ջէն" զարկաւ․ ան ատենը անիկայ
իր կառավարին ըսաւ․ Ձեռքդ
դարձուր, ու զիս բանակէն հանէ․
35 քանզի վիրաւորուեցայ ։ Եւ ան
օրը պատերազմը սաստկացաւ․ ու
թագաւորը Ասորւոց դիմացը՝ իր
կառքին մէջը կեցաւ, և իրիկուան
դէմ մեռաւ․ ու վէրքին արիւնը
36 կառքին մէջը վազեց ։ Ու երբոր
արեւը կը մտնէր, բանակին մէջը
մունետիկ պոռտեցաւ՝ ու ըսաւ․
Ամէն մարդ իր քաղաքը ու ամէն
37 մարդ իր երկիրը դառնայ ։ Եւ թա-
գաւորը մեռաւ, ու Սամարիա բե-
րուեցաւ․ ու թագաւորը Սամա-
38 րիայի մէջ թաղեցին ։ Եւ կառքը
Սամարիայի աւազանին քովը լուա-
ցին․ ու շուները անոր արիւնը լա-
փեցին․ ‡անոր զէնքերն ալ հոն
լուացին", յՏէրոջը ըսած խօսքին
համեմատ ։
39 Եւ Աքաաբին մնացորդ պատ-
մութիւնը, ու անոր բոլոր ըրածը,
և ղփղոսկրով շինած տունը, ու բո-
լոր շինած քաղաքները՝ աչա Իսրա-
յէլի թագաւորներուն յիշատակաց
40 գրքին մէջը գրուած են ։ Եւ Ա-
քաաբ իր հայրերուն հետ քնացաւ,
ու անոր տեղը՝ անոր որդին ԱՈքո-
զիան թագաւոր եղաւ ։

ե ըՄն․ Լե․ 22 ։

հ բՄն․ Ժբ․ 31 ։ Առակ․ Ժզ․ 20 ։

* Կամ՝ ա-ռանց դի-տաւորու-թեան․ տես բ Թագ․ Ժե․ 11 ։

† Եբր․ յօ-դուածնե-րուն ու զը-րահին մէջ-տեղէն

‡ Կամ՝ բո-զերն ալ հոն լուացուե-ցան,

յ Գղ․ Իա․ 19 ։

ղ Ամով․ Գ․ 15 ։

ա Հմր 52 ։

41 Եւ Իսրայէլի Աքաաբ թագաւո-
րին չորրորդ տարին՝ Յուդայի վրայ
Ասայի որդին բՅովսափատը թա-
42 գաւոր եղաւ ։ Յովսափատ երեսուն-
ուհինգ տարեկան էր՝ երբոր թա-
գաւոր եղաւ, ու Երուսաղէմի մէջ
քսանուհինգ տարի թագաւորու-
թիւն ըրաւ․ և անոր մօրը անունը
Ազուբա էր, որ Սաղիին աղջիկն
43 էր ։ Ու գանիկայ իր հօրը Ասային
բոլոր ճամբուն մէջ քալեց․ անկէ
չխոտորեցաւ, ու Տէրոջը առջեւ
44 ուղղութիւն ըրաւ ։ Բայց դբարձր
տեղուանքը չվերցան․ ժողովուր-
դը տակաւին բարձր տեղերու վրայ
զոհեր կը մատուցանէր, ու խունկ
45 կը ծխէր ։ Եւ եՅովսափատ՝ Իս-
րայէլի թագաւորին հետ խաղա-
ղութիւն ըրաւ ։
46 Եւ Յովսափատին մնացորդ պատ-
մութիւնը՝ և անոր ըրած քաջու-
թիւնը ու պատերազմները՝ աչա
Յուդայի թագաւորներուն յիշա-
տակաց գրքին մէջը գրուած են ։
47 Եւ անիկայ զիր հօրը Ասային ժա-
մանակէն մնացած՝ Սոդոմական
մեղք գործողները երկրէն բնաջինջ
ըրաւ ։
48 էԱն ատենը Եդովմի մէջ թագա-
ւոր չկար․ մէկ փոխարքայ մը կար ։
49 Ու ըՅովսափատ ԼԹարսիսի նա-
ւեր շինեց, որ Ոփիր ‖երթան ոս-
կիի համար․ թբայց չգացին". քան-
զի նաւերը ժԳասիոնգաբերի մէջ
50 կտոր կտոր եղան ։ Ան ատենը Ա-
քաաբի որդին Ոքոզիան Յովսափա-
տին ըսաւ․ Իմ ծառաներս քու
ծառաներուդ հետ նաւերով եր-
թան․ բայց Յովսափատ չհաճե-
51 ցաւ ։ Եւ ԼՅովսափատ իր հայրե-
րուն հետ քնացաւ, ու իր հայրե-
րուն հետ իր հօրը Դաւիթին քա-
ղաքին մէջը թաղուեցաւ․ և անոր
տեղը՝ անոր որդին Յովրամը թա-
գաւոր եղաւ ։
52 Յուդայի Յովսափատ թագաւո-
րին տասնուեօթներորդ տարին՝
Իսրայէլի վրայ ԽԱքաաբի որդին
Ոքոզիան թագաւոր եղաւ Սամա-
րիայի մէջ, ու Իսրայէլի վրայ եր-
կու տարի թագաւորութիւն ը-
53 րաւ ։ Եւ Տէրոջը առջեւ չարու-
թիւն ըրաւ․ ու ծիր հօրը ճամբան,
և իր մօրը ճամբան, ու Իսրայէլին
մեղանչել տուող Նաբատեան Յե-
54 րոբովամին ճամբան բռնեց․ Ու
ԿԲաահաղին ծառայութիւն ըրաւ,
ու անոր երկրպագութիւն ըրաւ․
և իր հօրը բոլոր ըրածին պէս ընելով՝
Իսրայէլի Տէր Աստուածը բարկա-
ցուց ։

Ն․ Ք․ ՉՔ․ 914

բ բՄն․ Ի․ 31 ։

գ բՄն․ Ժէ․ 3 ։

դ Գլ․ Ժդ․ 23 ։ ԺԵ․ 14 ։ դ Թագ․ Ժբ․ 3 ։

ե բՄն․ ԺԹ․ 2 ։ բ Կոր․ Զ․ 14 ։

զ Գլ․ Ժդ․ 24 ։ ԺԵ․ 12 ։

913

է Ծն․ Լե․ 23 ։ բ Թագ․ Ը․ 14 ։ դ Թագ․ Գ․ 9 ։ Ը․ 20 ։

ը բՄն․ Ի․ 35 ։ Ճ ։

Լ Գլ․ Ժ․ 22 ։

‖ Կամ՝ եր-թայ ոսկիի համար․ բայց չգը-նաց․

թ բՄն․ Ի․ 37 ։

ժ Գլ․ Թ․ 26 ։

Լ բՄն․ Իա․ 1 ։

889

Խ Հմր 40 ։

898

ծ Գլ․ ԺԵ․ 26 ։

կ Դատ․ Բ․ 11 ։ Գլ․ ԺԶ․ 31 ։

# *ՉՈՐՐՈՐԴ ԳԻՐՔ ԹԱԳԱՒՈՐԱՑ

Ն. Ք. Ղ. Ք. Երր 896

## ԳԼՈՒԽ Ա

1 Մովաբ կ'ապստամբի ։ 2 Ոքոզիա՝ Բահաղ ճանճիկին բան հարցընելու համար մարդ կը խրկէ . բայց Եղիա անոր վրայ գալու դատաս- տանը կ'իմացընէ անոր ։ 5 Եղիա երկու անգամ երկինքէն կրակ կ'իջեցընէ ան մարդոցը վրայ՝ որոնք Ոքոզիա խրկեր էր զանիկայ բռնելու . 18 իսկ երրորդ զօրագլխին կը խնայէ , ու հրեշ- տակէ մը քաջալերութիւն առնելով կ'երթայ թագաւորին կ'իմացընէ թէ պիտի մեռնի ։ 17 Յովրամ՝ Ոքոզիային տեղը կը յաջորդէ ։

*Կամ՝ ԵՐԿ ՐՈՐԴ ԳԻՐՔ ԹԱԳԱ- ՒՈՐԱՑ

–Գլ. գ. 5 ։

Բ Բ Թագ. ը. 2 ։

գ ա Թագ. ե. 10 ։

1 Ու "Աքաաբին մեռնելէն ետքը՝
Մովաբ ᵇ Իսրայէլէն դէմ ապըս-
տամբեցաւ ։
2 Ու Ոքոզիա՝ Սամարիայի մէջ իր
վերնատանը վանդակապատէն վար
ինկաւ , ու հիւանդացաւ . ու
պատգամաւորներ խրկեց՝ անոնց
ըսելով . Գացէք ᶜ Ակկարոնի Բա-
հաղ ճանճիկ աստուծոյն հարցու-
ցէք , թէ արդեօք աս հիւանդու-
3 թենէս պիտի առողջանամ ։ Եւ
Տէրոջը հրեշտակը Թեզբացի Ե-
ղիային ըսաւ . Ելի՛ր , Սամա-
րիայի թագաւորին պատգամաւոր-
ները դիմաւորելու գնա , ու ա-
նոնց ըսէ . Միթէ Իսրայէլի մէջ
Աստուած չկա՞յ , որ դուք Ակկարո-
նի Բահաղ ճանճիկ աստուծոյն
4 հարցընելու կ'երթաք . Անոր համար
Տէրը այսպէս կ'ըսէ . Քու ելած
անկողինէդ վար պիտի չիջնես , հա-
պա անշուշտ պիտի մեռնիս . ու
Եղիա գնաց ։
5 Եւ պատգամաւորները անոր
դարձան . ու Ոքոզիա անոնց ըսաւ .
6 Ինչո՞ւ համար ետ դարձաք ։ Եւ
անոր ըսին . Մեր դիմացը մարդ մը
ելաւ , ու մեզի ըսաւ . Գացէ՛ք ձեզ
խրկող թագաւորին դարձէք , ու
անոր ըսէք . Տէրը այսպէս կ'ըսէ .
Միթէ Իսրայէլի մէջ Աստուած
չկա՞յ , որ Ակկարոնի Բահաղ ճան-
ճիկ աստուծոյն հարցընելու կը
խրկես . անոր համար քու ելած
անկողինէդ վար պիտի չիջնես , հա-
7 պա անշուշտ պիտի մեռնիս ։ Եւ
անիկայ ըսաւ անոնց . Ձեզ դիմա-
ւորող ու աս խօսքերը ձեզի զրու-
8 ցող մարդը ի՞նչպէս մարդ էր ։ Ու
անոր ըսին . Անիկայ ᵈ մազոտ մարդ
մըն էր , ու մէջքը մաշկեղէն գօտի
մը կապեր էր ։ Եւ Թագաւորը ը-
սաւ . Անիկայ Թեզբացի Եղիան է ։
9 Ու անոր՝ յիսուն հոգիով մէկ
յիսնապետ մը խրկեց . և անիկայ
Եղիային քովը ելաւ . ու Եղիա լե-
ռան գլուխը նստած էր . և յիս-
նապետը անոր ըսաւ . Մա՛րդ Աս-
տուծոյ , թագաւորը կ'ըսէ որ վար
10 իջնես ։ Ու Եղիա պատասխան
տուաւ , ու յիսնապետին ըսաւ .
Թէ որ ես Աստուծոյ մարդն եմ ,
ᵉ երկինքէն կրա՛կ թող իջնէ , և
քեզ ու քու յիսուն հոգիդ ուտէ ։
Ու երկինքէն կրակ իջաւ , և զանի-
կայ ու անոր յիսուն հոգին կերաւ ։
11 Եւ անոր՝ նորէն յիսուն հոգիով
մէկ ուրիշ յիսնապետ մը խրկեց .
ու անիկայ խօսեցաւ՝ ու անոր ը-
սաւ . Մա՛րդ Աստուծոյ , թագա-
ւորը այսպէս կ'ըսէ . Շուտով վա՛ր
12 իջի՛ր ։ Ու Եղիա պատասխան
տուաւ՝ ու անոնց ըսաւ . Թէ որ ես
Աստուծոյ մարդն եմ , երկինքէն
կրա՛կ թող իջնէ , և քեզ ու քու
յիսուն հոգիդ ուտէ ։ Ու երկին-
քէն Աստուծոյ կրակը իջաւ , և
զանիկայ ու անոր յիսուն հոգին
կերաւ ։
13 Ու նորէն յիսուն հոգիով մէկ
երրորդ յիսնապետ մը խրկեց . ու
ան երրորդ յիսնապետը վեր ելաւ ,
ու գնաց Եղիային առջևը ծունկ
չոքեց , և անոր աղաչեց ու ըսաւ .
Մարդ Աստուծոյ , թող իմ հոգիս՝
ու աս յիսուն ծառաներուդ հոգի-
ները դու աչքերուդ առջևը պա-
14 տուական սեպուին . Ահա երկին-
քէն կրակ իջաւ , ու ան առջի
երկու յիսնապետները և անոնց յի-
սուն հոգիները կերաւ . բայց հի-
մա իմ հոգիս քու աչքիդ առջևը
թող պատուական սեպուի ։
15 Ու Տէրոջը հրեշտակը Եղիային
ըսաւ . Անոր հետ իջի՛ր , անոր ե-
րեսէն մի՛ վախնար . ու Եղիա ելաւ
16 անոր հետ թագաւորին իջաւ ։ Եւ
անոր ըսաւ . Տէրը այսպէս կ'ըսէ .
Որովհետև Ակկարոնի Բահաղ ճան-
ճիկ աստուծմէն հարցընելու համար
պատգամաւորներ խրկեցիր ․ իբր
թէ Իսրայէլի մէջ Աստուած չկար ,
որ անոր բան հարցընէիր , անոր
համար ալ քու ելած անկողինէդ

դ Տե՛ս Զաք. ժգ. 4 ։ Մատ. գ. 4 ։

Ն. Ք. Ղ. Ք. Երր 896

ե Ղու. թ. 54 ։

զ ա Թագ. իզ. 21 ։ Սաղ. հբ. 14 ։

Ն․ Ք․ ԴՓ․ Իբր 896

896

Ե Գլ․ գ․ 1։

վար պիտի չիջնես, հապա անշուշտ
պիտի մեռնիս։
17 Եւ անիկայ մեռաւ, Տէրոջը խօս-
քին համեմատ՝ որն որ Եղիան խօ-
սեր էր. և որովհետեւ անիկայ որդի
չունէր, անոր տեղը՝ Յովրամը
թագաւոր եղաւ, Յուդայի Յովսա-
փատեան Յովրամ թագաւորին
18 երկրորդ տարին։ Եւ Ոքոզիային
ըրած գործքերուն մնացորդ պատ-
մութիւնը՝ ահա Իսրայէլի թագա-
ւորներուն յիշատակաց գրքին մէ-
ջը գրուած է։

## ԳԼ․ Բ

1 Եղիա իր գատուելուն համար Եղիսէին խօսե-
լով՝ իր վերարկուովը Յորդանանը երկուքի կը
բաժնէ. 9 ու Եղիսէին խնդիրքը կատարելով՝
ինքը հրեղէն կառքով երկինքը կը վերնայ։
12 Եղիսէ՝ Եղիային վերարկուովը Յորդանանը
երկուքի բաժնելով՝ իբրև Եղիային յաջորդը
կ՚ընդունուի։ 16 Մարգարէից որդիները Ե-
ղիսէէն դժուարութեամբ հրաման առնելով՝
Եղիան փնտռելու կ՚երթան, բայց չեն կրնար
զանիկայ գտնել։ 19 Եղիսէն աղով կը բժ-
շկէ փտասակար ջուրերը։ 23 Արջերը՝ Ե-
ղիսէն ծաղր ընող տղաքը կը փառատեն։

1 Ու երբոր Տէրը՝ Եղիան մրրիկով
երկինք պիտի վերցնէր, Եղիա
ու Եղիսէ Գաղգաղայէն գացին,
2 Ու Եղիան ըսաւ Եղիսէին. Դուն
հոս նստէ. քանզի Տէրը զիս Բե-
թէլ խրկեց։ Ու Եղիսէն ըսաւ.
Տէրը կենդանի է, ու քու անձդ
կենդանի է, որ ես քեզ չեմ թո-
3 ղուր. ու Բեթէլ իջան։ Եւ Բե-
թէլի մէջ գտնուող մարգարէից
որդիքը Եղիսէին ելան, ու անոր
ըսին. Գիտե՞ս որ այսօր Տէրը քու
տէրդ քու գլխէդ պիտի առնէ։ Եւ
անիկայ ըսաւ. Ես ալ գիտեմ.
4 լուռ կեցիք։ Ու Եղիա անոր ը-
սաւ. Ով Եղիսէ, դուն հոս նստէ.
քանզի Տէրը զիս Երիքով խրկեց։
Եւ անիկայ ըսաւ. Տէրը կենդանի
է, ու քու անձդ կենդանի է, որ
ես քեզ չեմ թողուր. ու Երիքով
5 գացին։ Ու Երիքովի մէջ գտ-
նուող մարգարէից որդիքը Եղի-
սէին մօտեցան, ու անոր ըսին.
Գիտե՞ս որ այսօր Տէրը քու տէրդ
քու գլխէդ պիտի առնէ։ Եւ ա-
նիկայ ըսաւ. Ես ալ գիտեմ, լուռ
6 կեցիք։ Ու Եղիա անոր ըսաւ.
Դուն հոս նստէ. քանզի Տէրը զիս
Յորդանան խրկեց։ Եւ անիկայ
ըսաւ. Տէրը կենդանի է, ու քու
անձդ կենդանի է, որ ես քեզ չեմ
թողուր. ու երկուքնին գացին։
7 Եւ մարգարէից որդիներէն յիսուն
մարդ գացին դիմացը՝ հեռուանց
կայնեցան. ու անոնք երկուքը
8 Յորդանանու քովը կայնեցան։ Ու
Եղիա իր վերարկուն առաւ ծալ-
լեց, և ջուրերուն զարկաւ, ու

Ծն․ ե․ 24։

Բ գ Թագ․ ժթ․ 21։

Գ Տես Հռ-ոութ․ ա․ 15․ 16։

Դ ա Թագ․ ա․ 26։ Հմր 4․ 6։ Գլ․ դ․ 30։

Ե գ Թագ․ ի․ 35։ Հմր 5։ 7․ 15։ Գլ․ դ․ 1․ 38։ թ․ 1։

մէկ կողմը ու մէկալ կողմը բաժ-
նուեցան. ու երկուքնին ցամա-
քով անցան։
9 Ու երբոր անոնք անցան, Եղիան
ըսաւ Եղիսէին. Խնդրէ ինչ ընեմ
քեզի, քանի որ քեզմէ վերցուած
չեմ։ Ու Եղիսէն ըսաւ. Քու
ոգիիդ կրկնապատիկը ունենամ։
10 Եւ անիկայ ըսաւ. Դժուար բան
խնդրեցիր. բայց թէ որ քեզմէ
վերցուելու ատենս՝ զիս տեսնես,
քեզի այնպէս ըլլայ, ապա թէ ոչ՝
չըլլայ։
11 Ու երբոր անոնք խօսելով կ՚եր-
թային, ահա հրեղէն կառք մը և
հրեղէն ձիեր երեւցան, ու զանոնք
իրարմէ զատեցին. ու Եղիա մրրի-
12 կով երկինքը ելաւ։ Ու Եղիսէ կը
տեսնէր. ու աղաղակեց. Հայր
իմ, հայր իմ, Իսրայէլի կառքը
ու անոր ձիաւորները. ու ալ չտե-
սաւ զանիկայ. և իր հանդերձները
բռնեց, ու զանոնք երկու կտորի
13 պատռեց։ Ու Եղիային վրայէն ին-
կած վերարկուն վերցուց, և դար-
ձաւ Յորդանանու եզերքը կայնե-
14 ցաւ։ Ու Եղիային վրայէն ինկած
վերարկուն առաւ, ջուրերուն զար-
կաւ, և ըսաւ. Եղիային Տէր Աս-
տուածը ո՞ւր է հիմա. ու երբոր
ջուրերուն զարկաւ, մէկ կողմը ու
մէկալ կողմը բաժնուեցան. ու Ե-
ղիսէն անցաւ։
15 Ու Երիքովի մարգարէից որդիքը
զանիկայ դիմացէն տեսնելով՝ ը-
սին. Եղիային ոգին Եղիսէին վրայ
հանգչեցաւ. և զանիկայ դիմաւո-
րելու գացին, ու գետնէն անոր
16 խոնարհութիւն ըրին. Եւ անոր
ըսին. Ահա քու ծառաներուդ հետ
յիսուն զօրաւոր մարդիկներ կան.
թող երթան՝ ու քու տէրդ փնտռ-
ռեն. կարելի է որ Տէրոջը Հոգին
զանիկայ վերցուց, ու մէկ լեռան
մը վրայ, կամ մէկ ձորի մը մէջ
ձգեց. ու անիկայ ըսաւ. Մի խըր-
17 կէք։ Բայց անոնք բռնադատե-
ցին զանիկայ, մինչև որ ամչցաւ,
ու ըսաւ. Խրկեցէք։ Եւ յիսուն
մարդ խրկեցին, որոնք իրեք օր
փնտռեցին, բայց զանիկայ չգտան.
18 Ու անոր դարձան. և անիկայ Երի-
քով կը նստէր. ու անոնց ըսաւ.
Ես ձեզի չըսի՞ որ՝ Մի երթաք։
19 Եւ քաղաքին մարդիկները Եղի-
սէին ըսին. Ահա քաղաքիս բնա-
կութիւնը աղէկ է, ինչպէս որ մեր
Տէրը կը տեսնէ. բայց ջուրերը
20 գէշ՝ ու երկիրը անպտուղ է։ Եւ
անիկայ ըսաւ. Ինծի մէկ նոր կուժ
մը բերէք, ու մէջը աղ դրէք. ու
21 անոր բերին։ Եւ անիկայ ջուրե-
րուն աղբիւրը ելաւ, ու հոն աղ

Ն․ Ք․ ԴՓ․ 896

Ղեւ․ ժդ․ 21։ Յես․ դ․ 16։ Հմր 14։

Ե Գլ․ զ․ 17։ Սաղ․ ծդ․ 4։

Ը Գլ․ ժգ․ 14։

Թ Հմր 8։

Ժ Հմր 7։

Ի Տես գ Թագ․ ժը․ 12։ Եզեկ․ ը 3։ Գործ․ ը․ 39։

կամ՝ բաժակ

Լ Տես Ել․ ժե․ 25։ Գլ․ դ․ 41։ զ 6։ Յովհ․ թ․ 6։

Ն․ Ք․ ՂՔ․ 896
նետեց , ու ըսաւ ․ Տէրը այսպէս
կ'ըսէ ․ Ասոր ջուրերը բժշկեցի ․ ա՛լ ա-
սկէ մահ ու անպտղու-
22 թիւն չըլլայ ․ Եւ ան ջուրերը
բժշկուեցան մինչեւ աս օրս , Եղիսէ-
յին ըսած խօսքին համեմատ ։
23 Ու անկէ Բեթէլ ելաւ ․ ու երբ-
որ ճամբայէն վեր կ'ելլէր , քաղաքէն
պզտիկ տղաքներ ելան , և զանիկայ
ծաղր կ'ընէին ու կ'ըսէին ․ Ելի՛ր
24 կնտակ , ելի՛ր կնտակ ։ Ու ետին
դարձաւ ու զանոնք տեսաւ , և Տէ-
րոջը անունովը զանոնք անիծեց ։
Ու անտառէն երկու մատակ արջ ե-
լան , ու անոնցմէ քառասունուերկու
25 տղայ պատառեցին ։ Եւ անկէ Կար-
մեղոս լեռը գնաց , ու անկէ Սամա-
րիա դարձաւ ։

ԳԼ․ Գ

1 Յովրամին թագաւորութիւնը ։ 4 Մեսա թագաւորը կ'ապստամբի ․ 6 Յովրամը , Յովսափատը , ու Եդովմի թագաւորը ջուրի համար նեղութիւն կրելով՝ Եղիսէին կ'երթան ․ ան ալ ջուր ու յաղթութիւն կը խոստանայ ։ 21 Մովաբացիք ջուրին գոյնէն խաբուելով՝ աւար առնելու մօտ կ'երթան , ու կը յաղթուին ։ 26 Մովաբի թագաւորը իր անդրանիկ որդին ողջակէզ մատուցանելով՝ պաշարումը կը դադրեցնէ ։

ՙ Գլ․ ա․ 17։
1 Եւ Աքաաբի որդին ՙՅովրամ՝
Յուդայի Յովսափատ թագա-
ւորին տասնուութերորդ տարին՝
Սամարիայի մէջ Իսրայէլի վրայ
թագաւոր եղաւ ․ ու տասուերկու
տարի թագաւորութիւն ըրաւ ։
2 Եւ անիկայ Տէրոջը առջեւը չարու-
թիւն ըրաւ ․ բայց ոչ իր հօրը ու
Ի Գ Թագ․ ԺԴ․ 31, 32։ իր մօրը պէս ․ քանզի անիկայ Բիր
հօրը շինած Բահաղի կուռքը վեր-
3 ցուց ։ Բայց Իսրայէլին մեղան-
Գ Թագ․ ԺԲ․ 28, 31, 32։ չել տուող Գնաբատեան Յերոբո-
վամին մեղքերուն յարեցաւ ․ ա-
նոնցմէ չզատուեցաւ ։
4 Եւ Մովաբի Մեսա թագաւորը
հօտերու տէր ըլլալով , Իսրայէլի
Դ Տես Ես․ ԺԶ․ 1։ թագաւորին հարիւր հազար Դգա-
ռըն , ու հարիւր հազար գեղմնաւոր
Ե Գլ․ ա․ 1։ 5 խոյ կու տար ։ Բայց ԵԱքաաբին
մեռնելէն ետքը՝ Մովաբի թագա-
ւորը Իսրայէլի թագաւորին դէմ
6 ապստամբեցաւ ։ Եւ ան օրը Յով-
րամ թագաւորը Սամարիայէն ե-
լաւ , ու բոլոր Իսրայէլը համրեց ,
895 7 Ու գնաց , և Յուդայի Յովսափատ
թագաւորին լուր ղրկեց՝ ըսելով ․
Մովաբի թագաւորը ինծի դէմ
ապստամբեցաւ ․ ինծի հետ Մովա-
բի վրայ պատերազմելու կ'երթա՞ս ։
Զ Գ Թագ․ ԻԲ․ 4։ Ու անիկայ ըսաւ ․ Կ'երթամ , Զես
քեզի պէս եմ , իմ ժողովուրդս
քու ժողովուրդիդ պէս , ու ձիերս
8 քու ձիերուդ պէս են ։ Եւ անիկայ
ըսաւ ․ Ո՞ր ճամբայէն երթանք ։
Ան ալ ըսաւ ․ Եդովմի անապատին
9 ճամբայէն ։ Եւ Իսրայէլի թագա- Ն․ Ք․ ՂՔ․ 895
ւորը՝ Յուդայի թագաւորը ու Ե-
դովմի թագաւորը գացին , ու եօթը
օրուան ճամբայ պտըտեցան ․ և
Էանոնց հետը եղող բանակին ու Է Տես Ել․ Ժա․ Տ․
անասուններուն համար ջուր չկար ։
10 Ան ատենը Իսրայէլի թագաւորը
ըսաւ ․ Աւաղ ․ Տէրը աս իրեք
թագաւորները Մովաբին ձեռքը
11 տալու կանչեր է ։ Եւ ԸՅովսա- Ը Գ Թագ․ ԻԲ․ 7։
փատ ըսաւ ․ Աստեղ Տէրոջը մար-
գարէ մը չկա՞յ , որ անոր միջոցովը
Տէրոջը հարցընենք ։ Ու Իսրայէլի
թագաւորին ծառաներէն մէկը
պատասխան տուաւ ու ըսաւ ․ Ե-
ղիային ձեռքերուն ջուր լեցընող
12 Սափատեան Եղիսէն հոս է ։ Եւ
Յովսափատ ըսաւ ․ Անոր քովը Տէ-
րոջը խօսքը կայ ․ ու Իսրայէլի թա-
գաւորը և Յովսափատը ու Եդովմի
13 թագաւորը Թանոր իջան ։ Ու Եղի- Թ Գլ․ Բ․ 25։
սէ Իսրայէլի թագաւորին ըսաւ ․
Ժ Դուն ինծի հետ ի՞նչ բան ունիս ․ Ժ Եզեկ․ ԺԴ․ 3։
Իդուն քու հօրդ Իմարգարէներուն Ի Դատ․ Ժ․ 14։ Հռութ․ Ա․ 15։
ու քու մօրդ մարգարէներուն գնա ։
Եւ Իսրայէլի թագաւորը անոր ը-
սաւ ․ Չէ , վասն զի Տէրը աս իրեք Լ Գ Թագ․ ԺԸ․ 19։
թագաւորը Մովաբին ձեռքը մատ-
14 նելու կանչեր է ․ Ու Եղիսէն ըսաւ ․
Զօրաց Տէրը՝ որուն առջեւը կը
կայնիմ ։ Խկենդանի է որ , եթէ Խ Գ Թագ․ ԺԷ․ 1։ Գլ․ Ե․ 16։
Յուդայի Յովսափատ թագաւորին
վրայ համարում չունենայի , բնաւ
քու երեսդ պիտի չնայէի , ու քեզ
15 պիտի չտեսնէի ։ Եւ հիմա ինծի
Ծ մէկ նուագածու մը բերէք ․ ու Ծ Տես Ա Թագ․ Ժ․ 5։
երբոր նուագածուն նուագարանը
կը զարնէր , Կանոր վրայ Տէրոջը Կ Եզեկ․ Ա․ 3։ Գ․ 14, 22։ Ը․ 1։
16 ձեռքը եղաւ ․ Ու ըսաւ ․ Տէրը այս-
պէս կ'ըսէ ․ ՀԱս հեղեղատը փոս Հ Տես Գլ․ Դ․ 3։
17 փոս ըրէք ․ Քանզի Տէրը այսպէս
կ'ըսէ ․ Հով պիտի չտեսնէք , ու
անձրեւ պիտի չտեսնէք ․ բայց աս
հեղեղատը ջրով պիտի լեցուի , և
պիտի խմէք դուք ու ձեր հօտերը
18 ու ձեր անասունները ։ Սակայն ա-
սիկայ Տէրոջը առջեւը պզտիկ բան
մը ըլլալով , Մովաբն ալ ձեր ձեռ-
19 քը պիտի մատնէ ․ Եւ ամէն պա-
րըսպաւոր քաղաքը՝ ու ամէն ընտիր
քաղաքը պիտի զարնէք , և ամէն
աղնիւ ծառերը կոտրէք , ու ամէն
ջուրի աղբիւրները գոցէք , ու ամէն
ընտիր արտերը քարերով աւրէք ։
20 Եւ առաւօտուն Ձզոհը մատու- Ձ Ել․ ԻԹ․ 39, 40։
ցուած ատենը , ահա Եդովմի ճամ-
բայէն ջուրեր կու գային , ու եր-
կիրը ջրով լեցուեցաւ ․
21 Ու երբոր բոլոր Մովաբացիք
լսեցին որ թագաւորները ելեր են
իրենց հետը պատերազմելու՝ ամէն
գօտի կապելու կարողութիւն ու-
նեցողները ժողվուեցան ․ ու սահ-

Ն․ Ք․ ՉՔ․ 895

22 մանագլուխը կայնեցան ։ Եւ առա-
ւօտուն կանուխ ելան, ու արեւուն
ճառագայթները ջուրերուն վրայ
զարկած ըլլալով, Մովաբացիք դի-
մացէն ան ջուրերը արիւնի պէս
23 կարմիր տեսան, Ու ըսին․ Ասիկայ
արիւն է․ անտարակոյս թագաւոր-
ները իրարու հետ կռուեր են, ու
մէկզմէկ զարկեր են․ հիմա ով Մո-
24 վաբացիք, աւարը ժողվէ՛նք ։ Ա-
սանկով անոնք Իսրայէլի բանակը
գացին․ ու Իսրայէլացիք ելան Մո-
վաբացիները զարկին, որոնք անոնց
երեսէն փախան․ ու Իսրայէլացիք
Մովաբացիները զարնելով՝ անոնց
25 երկիրը մտան․ Եւ քաղաքները կոր-
ծանեցին, ու ամէն ընտիր արտերու
մէջ՝ ամէն մարդ իր քարը նետեց,
ու զանոնք լեցուցին, և ամէն ջուրի
աղբիւրները գոցեցին, ու ամէն աղ-
նիւ ծառերը կոտրեցին․ այնպէս
Եսա․ ԺԶ․ 7, 11
որ՝ միայն Կիրհարեսեթին քարերը
թողուցին․ ու պարսաւորները զա-
նիկայ պաշարեցին, ու զարկին ։
26 Եւ Մովաբին թագաւորը երբոր տե-
սաւ որ պատերազմը իր վրայ սաստ-
կացաւ, իր հետը եօթը հարիւր
սուսերամերկ զօրք առաւ, որ մին-
չեւ Եդովմի թագաւորը ճեղքեն
27 անցնին․ բայց չկրցան ։ Ուստի
առաւ իր անդրանիկ որդին՝ որ իր
տեղը պիտի թագաւորէր, ու զա-
նիկայ պարսպին վրայ ողջակէզ ը-
րաւ․ և Իսրայէլացւոց դէմ մեծ
բարկութիւն եղաւ․ ու անոր վրա-
յէն ետ քաշուեցան, ու իրենց եր-
կիրը դարձան ։

## ԳԼ․ Դ

1 Եղիսէ՝ որբեւայրիին եղը կը շատցընէ․ 8 բարի Սունամացիին զաւակ մը կը խոստանայ․ 18 անոր մեռած տղան կը յարուցանէ․ 38 Գաղգաղայի մէջ թունաւոր ապուրը կը բժշկէ․ 42 հարիւր մարդը քսան հացով կը կշտացընէ ։

ա Դ Թագ․ Ի․ 35
1 Ու ա մարգարէից որդւոցը կիննե-
րէն մէկ կնիկ մը Եղիսէին աղա-
ղակելով ըսաւ․ Քու ծառադ էրիկս
մեռաւ․ ու դուն քու ծառայիդ
աստուածավախ ըլլալը գիտես․ և
բ Ղեւ․ ԻԵ․ 39, Մատ․ ԺԸ․ 25
պարտատէրը եկաւ բ որ իմ երկու
2 որդիներս իրեն ծառայ առնէ ։ Ու
Եղիսէ անոր ըսաւ․ Քեզի ի՞նչ ը-
նեմ․ ըսէ ինծի, տունը ի՞նչ ու-
նիս ։ Եւ անիկայ ըսաւ․ Քու ա-
* Կամ՝ օծուելու մը իւղ
ղախինդ տանը մէջ *աման մը" եղէն
3 'ի զատ՝ ուրիշ բան մը չունի ։ Ու
Եղիսէ անոր ըսաւ․ Գնա՛ դուրսէն
քու բոլոր դրացիներէդ քեզի պա-
գ Գ Թագ․ ԺԷ․ 16
րապ ամաններ ուզէ, գ ու քիչ մի՛
4 ուզեր․ Եւ տունդ մտիր՝ քու վրա-
յէդ ու քու որդւոցդ վրայէն դու-
ռը գոցէ, և այն եղը ան բոլոր ա-
մաններուն մէջը պարպէ, ու լե-
5 ցուածը վերցո՛ւր ։ Եւ անիկայ ա-
նոր քովէն գնաց․ ու իր վրայէն
ու իր որդւոցը վրայէն դուռը գո-
ցեց․ անոնք անոր կը մօտեցնէին,
6 ու անիկայ կը լեցնէր ։ Ու երբոր
ան ամանները լեցուեցան, իր որ-
դւոյն ըսաւ․ Ինծի ուրիշ աման
մօտեցուր․ ու անիկայ ըսաւ անոր․
Ուրիշ աման չկայ․ ան ատենը եղը
7 կայնեցաւ ։ Եւ կինը գնաց Աստու-
ծոյ մարդուն պատմեց․ ու անիկայ
ըսաւ․ Գնա՛ եղը ծախէ՛, ու պարտքդ
վճարէ՛․ և աւելցածովը՝ դուն ու
քու որդիքդ ապրեցէ՛ք ։
դ Յես․ ԺԹ․ 18
8 Ու մէկ օր մը երբոր Եղիսէ դ Սու-
նամէն կ'անցնէր, հոն մէկ երեւելի
կնիկ մը կար, որ զանիկայ հաց ու-
տելու ստիպեց․ ու ետքը քանի որ
անկէ կ'անցնէր, հա՛ց ուտելու հա-
9 մար հոն կ'իջնէր ։ Եւ ան կինը
իր էրկանը ըսաւ․ Ահա գիտեմ որ
ասիկայ Աստուծոյ մէկ սուրբ մարդն
է, որ միշտ մեր քովէն կ'անցնի․
10 Հիմա մէկ պզտիկ վերնատուն մը
շինենք պատին վրայ, ու հոն անոր
համար՝ անկողին, սեղան, աթոռ,
ու աշտանակ դնենք, որ երբոր մեզի
11 գայ՝ հոն իջնէ ։ Եւ եղաւ որ մէկ
օր մը անիկայ հոն եկաւ, ու վեր-
նատունը մտաւ, ու հոն պառկե-
12 ցաւ․ Եւ իր մանչուն Գէեզիին ը-
սաւ․ Սունամացի կնիկը կանչէ՛․
ու զանիկայ կանչեց․ և անոր առջեւը
13 կայնեցաւ ։ Ու անիկայ իր մանչուն
ըսաւ․ Անոր ըսէ՛․ ահա դուն մեզի
համար աս բոլոր աշխատանքը քա-
շեցիր․ քեզի ի՞նչ ընեմ․ թագա-
ւորին կամ զօրագլուխին ըսելիք մը
ունի՞ս․ և անիկայ ըսաւ․ Ես իմ
ժողովուրդիս մէջը կը բնակիմ ։
14 Ու Եղիսէ ըսաւ․ Անոր ի՞նչ կըր-
նանք ընել, ու Գէեզի ըսաւ․ Ի-
րաւցընէ անիկայ զաւակ չունի, ու
15 անոր էրիկը ծերացեր է ։ Ու Ե-
ղիսէ ըսաւ․ Զանիկայ կանչէ՛․ և
զանիկայ կանչեց․ ու դրանը մէջ
16 կայնեցաւ ։ Ու Եղիսէ անոր ըսաւ․
† Եբր․ Կենաց ժամանակին․ Ծն․ ԺԸ․ 10, 14, ե Հմր 28
†Գալ տարի" աս ատենս՝ գիրկդ
որդի մը պիտի ունենաս ։ Եւ ա-
նիկայ ըսաւ․ Ոչ, ո՛վ տէր իմ՝
մարդ Աստուծոյ, ե քու աղախինիդ
17 սուտ մի՛ զրուցեր ։ Ու կնիկը
յղացաւ, ու հետեւեալ տարին նոյն
ատենը որդի մը ծնաւ, ինչպէս որ
Եղիսէ անոր ըսեր էր ։
18 Եւ տղան մեծցաւ․ ու մէկ օր մը
իր հօրը գնաց հնձողներուն քովը ։
19 Եւ իր հօրը ըսաւ․ Գլո՛ւխս՝ գլ-
լո՛ւխս․ ան ալ մանչուն ըսաւ․
20 Ասիկայ իր մօրը տար ։ Ու զանի-
կայ վերցուց, ու անոր մօրը տա-
րաւ․ և անիկայ մինչեւ կէս օր անոր
ծունկերուն վրայ նստաւ, ու մե-
21 ռաւ ։ Եւ կնիկը վեր ելաւ, ու

Ն. Ք. ԴՔ. 895

զանիկայ Աստուծոյ մարդուն ան-
կողինին մէջը պառկեցուց, ու դու-
22 ռը գոցեց ու ելաւ։ Եւ իր էրիկը
կանչեց՝ ու ըսաւ. Կ'աղաչեմ՝ ինծի
մանչերուն մէկուն հետ էշ մը խրկէ,
որ շուտով մինչև Աստուծոյ մար-
դուն քովը երթամ, ու ետ դառ-
23 նամ։ Եւ անիկայ ըսաւ. Ի՞նչ կայ
որ դուն այսօր անոր պիտի երթաս.
ամսագլուխ չէ՞, շաբաթ չէ։ Ու
24 անիկայ ըսաւ. Ողջութիւն։ Ու
էշը պատրաստել տուաւ, և ման-
չուն ըսաւ. Քշէ գնա. ու մինչև որ
քեզի չըսեմ, քշելէն ետ մի կենար

Դ Գլ. Բ. 25.

25 ինծի համար։ Եւ Կարմեղոս լե-
ռը երթալով՝ Աստուծոյ մարդուն
քովը գնաց։ Ու երբոր Աստուծոյ
մարդը դիմացէն զանիկայ տեսաւ,
իր մանչուն Գեեզիին ըսաւ. Ահա
26 Սունամացի կնիկը հոն է. Հիմա
վազէ դիմաւորէ զանիկայ, ու ա-
նոր ըսէ. Ողջ առո՞ղջ ես. էրիկդ
ողջ առո՞ղջ է. տղան ողջ առո՞ղջ
է։ Եւ անիկայ ըսաւ. Ողջ առողջ
27 են. Ու լեռը Աստուծոյ

Ե Մատ. ԻԲ 9.

մարդուն եկաւ, և անոր ոտքերուն
փաթթուեցաւ. ու Գեեզի մօտե-
ցաւ որ զանիկայ ետ քաշէ, բայց
Աստուծոյ մարդը ըսաւ. Թող
տուր զանիկայ. քանզի անոր սիր-
տը ցաւած է. ու Տէրը ինծմէ պա-
28 հեց, ու ինծի չյայտնեց։ Եւ կնիկը
ըսաւ. Ես իմ տիրոջմէս որդի

Ը Հռ. 16.

խնդրեցի՞. չըսի՞ որ՝ Զիս մի՛
29 խաբեր։ Ու անիկայ Գեեզիին ը-

Թ Գ Թագ. ԺԸ. 46. Գլ. Թ. 1.

սաւ. Մէջքդ գօտի կապէ, և իմ
գաւազանս ձեռքդ առ ու գնա. և
թէ որ մարդու մը հանդիպիս,

Ժ Ղուկ. Ժ. 4.

անոր բարև մի՛ տար. ու թէ որ
մէկ մարդ մը քեզի բարև տայ, պա-

Ի Տես Ել. Է. 19. Ժդ. 16. Գլ. Բ. 14. Գործ. ԺԹ. 12. Լ Գլ. Բ. 2.

տասխան մի տար. և իմ գաւա-
30 զանս տղուն երեսին վրայ դիր։ Իսկ
տղուն մայրը ըսաւ. Տէրը կենդա-
նի է, ու քու անձդ կենդանի է,
որ քեզ պիտի չթողում։ Ու Եղի-
սէն ելաւ անոր ետևէն գնաց։
31 Բայց Գեեզի անոնց առջևը անցաւ,
ու գաւազանը տղուն երեսին վրայ
դրաւ. սակայն ո՛չ ձայն կար, և
ոչ զգացում. ուստի զանիկայ դի-
մաւորելու դարձաւ, և անոր պատ-

Խ Յովհ. ԺԱ. 11.

մեց՝ ու ըսաւ. Տղան չարթըն-
32 ցաւ։ Ու երբոր Եղիսէ տունը
մտաւ, ահա տղան մեռած իր
33 անկողինին վրայ պառկած էր։ Ու

Ծ Հռ. 4. Մատ. Զ. 6.

ներս մտնելով, երկուքնուն վրայէն
դուռը գոցեց, և Տէրոջը աղօթք
34 ըրաւ։ Ու ելաւ տղուն վրայ պառ-

Կ Գ Թագ. ԺԷ. 20.

կեցաւ. և իր բերանը անոր բերնին
վրայ, ու իր աչքերը անոր աչքե-

Հ Գ Թագ. ԺԷ. 21. Գործ. Ի. 10.

րուն վրայ, ու իր թաթերը անոր
թաթերուն վրայ դրաւ, և անոր
վրայ կծկեցաւ, ու տղուն մարմինը

Ն. Ք. ԴՔ. 895

35 տաքցաւ։ Եւ դարձաւ տանը մէջ
մէյմը աս կողմը՝ ու մէյմը ան
կողմը պտըտեցաւ, ու ելաւ անոր
վրայ կծկեցաւ. և տղան եօթը
անգամ փռնգաց, ու տղան աչքերը

Ձ Գ Թագ. ԺԷ. 21. Դ Գլ. Ը. 1. 5.

36 բացաւ։ Ան ատենը Գեեզին կան-
չեց՝ ու ըսաւ. Սունամացի կնիկը
կանչէ. ու զանիկայ կանչեց. և
անոր եկաւ. ու Եղիսէ անոր ըսաւ.
37 Տղադ առ։ Եւ կնիկը ներս մտնե-
լով՝ անոր ոտքերը ինկաւ, ու գետ-
նէն խոնարհութիւն ըրաւ, և իր
տղան առնելով դուրս ելաւ։

Ճ Գ Թագ. ԺԷ. 23. Եբր. ԺԱ. 35.

38 Ու Եղիսէ Գաղգաղա դարձաւ.
և ան երկրին մէջը սով կար. ու

Իբր 891

Մ Գլ. Բ. 1. Յ Գլ. Ը. 1. Ն Գլ. Բ. 3. Ղուկ. Ժ. 39. Գործ. ԻԲ. 3.

մարգարէից որդիքը անոր առջևը
կը նստէին. ու անիկայ իր մանչուն
ըսաւ. Մեծ կաթսան կրակին վրայ
դիր, և մարգարէից որդիներուն
39 ապուր եփէ։ Ու մէկը դաշտը ե-
լաւ որ խոտեր ժողվէ, ու մէկ վայ-
րենի բոյս մը գտաւ, և անկէ հան-
դերձը լեցուն վայրենի վարունգ
ժողվեց, ու եկաւ՝ զանոնք ապու-
րին կաթսային մէջը մանրեց. քան-
40 զի չէին ճանչնար։ Եւ ան մարդիկ-
ներուն առջևը դրին որ ուտեն. ու
երբոր ան ապուրէն կերան, պո-
ռալով ըսին. Կաթսային մէջը
մահ կայ՝ ո՛վ մարդ Աստուծոյ.

Շ Ել. Ժ. 17.

41 ու չկրցան ուտել։ Եւ անիկայ ը-
սաւ. Ալիւր բերէք. ու զանիկայ

Ո Տես Ել. ԺԵ. 25. Գլ. Բ. 21. Յոհ. Թ. 6.

կաթսային մէջը նետեց, ու ըսաւ.
Ժողովուրդին առջևը դիր որ ու-
տեն. ան ատենը կաթսային մէջը
վնասակար բան մը չկար։
42 Եւ Բաաղ Սաղիսայէն մարդ մը

Չ Ա Թագ. Թ. 4.

եկաւ. ու Աստուծոյ մարդուն՝

Պ Ա Թագ. Թ. 7. Ա Կոր. Թ. 11. Գաղ. Զ. 6.

երախայրիներէ շինուած հացեր՝
քսան հատ գարեղէն հաց, ու
թարմ հասկեր բերաւ իր պարկովը։
Եւ անիկայ ըսաւ. Ժողովուրդին
43 տուր որ ուտեն։ Եւ անոր ծառան

Ջ Ղուկ. Թ. 13. Յոհ. Զ. 9.

ըսաւ. Ասո՞ ի՞նչ է որ հարիւր մար-
դոց առջևը դնեմ. բայց անիկայ
ըսաւ. Ժողովուրդին տուր որ ու-

Ռ Ղուկ. Թ. 17. Յոհ. Զ. 11.

տեն. քանզի Տէրը այսպէս կ'ըսէ.
Պիտի ուտեն ու պիտի աւելնայ։

Ս Մատ. ԺԴ. 20. ԺԵ. 37. Յոհ. Զ. 13.

44 Եւ անոնց առջևը դրաւ. ու կե-
րան, և Տէրոջը ըսածին պէս աւել-
ցաւ։

ԳԼ. Ե

1 Նէեման՝ գերի բռնուած աղջկան մը ծանուցանելովը՝ Սամարիա կը խրկուի, որ իր բորոտութենէն բժշկուի։ 8 Եղիսէ զանիկայ Յորդանան խրկելով՝ բորոտութիւնը կը բժշկէ. 15 ու Նէեմանին պարգևները չընդունելով՝ երկրին հողէն կու տայ անոր։ 20 Գեեզի՝ իր տիրոջը անունովը Նէեմանը խաբելուն համար՝ բորոտութեամբ կը պատժուի։

Իբր 894

1 Եւ Ասորւոց թագաւորին զօրա-
գլուխը Նէեման՝ իր տիրոջը

Տ Ղուկ. Դ. 27.

առջևը մեծ ու յարգելի մարդ մըն
էր. քանզի Տէրը անոր ձեռքովը

Ր Ել. ԺԱ. 3.

Ն. Ք. ԴՔ. Իրր 894

Ասորւոց փրկութիւն տուեր էր . ու
աս մարդը զօրաւոր կտրիճ մըն էր ,
2 բայց բորոտ էր ։ Եւ Ասորւոց գուն-
դերը ելլելով՝ Իսրայէլի երկրէն մէկ
պզտիկ աղջիկ մը գերի առեր էին .
ու անիկայ Նէեմանին կնկանը քովն
3 էր ։ Եւ անիկայ իր տիկնոջը ը-
սաւ . Երանի թէ իմ տէրս՝ Սա-
մարիա եղող մարգարէին առջեւը
ըլլար . ան ատենը զանիկայ իր բո-
4 րոտութենէն կը բժշկէր ։ Ու Նէե-
մանը գնաց իր տիրոջը պատմեց , ու
ըսաւ . Իսրայէլի երկրէն եղող աղ-
ջիկը այսպէս ու այնպէս խօսեցաւ ։
5 Եւ Ասորւոց թագաւորը ըսաւ .
Գնա՛ ուրեմն . ես Իսրայէլի թագա-
ւորին նամակ կը խրկեմ ։ Ու ա-
նիկայ գնաց . և ᵃիր ձեռքը տասը
տաղանդ արծաթ , ու վեց հազար
ոսկի , ու տասը ձեռք փոխելու
6 հանդերձ առաւ ։ Եւ Իսրայէլի
թագաւորին բերաւ նամակը , *որ
այսպէս գրուած էր" . Արդ՝ երբոր
աս նամակը քեզի հասնի , †գիտցած
ըլլաս որ" իմ ծառաս Նէեմանը քեզի
կը խրկեմ , որ զանիկայ իր բորո-
7 տութենէն բժշկես ։ Ու երբոր Իս-
րայէլի թագաւորը նամակը կար-
դաց , իր հանդերձները պատռեց .
ու ըսաւ . Միթէ ես մեռցընելու ու
ապրեցընելու կարողութիւն ունեցող
ᵇԱստուած եմ , որ ասիկայ ինծի
մարդ մը խրկեր է՝ իր բորոտութե-
նէն բժշկելու համար . ուստի աղէկ
գիտցէք , ու տեսէք , որ ասիկայ
ինծմէ պատճառ մը կը փնտռէ ։
8 Ու՛ երբոր Աստուծոյ մարդը Եղի-
սէն լսեց՝ որ Իսրայէլի թագաւորը
իր հանդերձները պատռեր է , թա-
գաւորին մարդ խրկեց՝ ու ըսաւ .
Ինչո՞ւ հանդերձներդ պատռեցիր .
թող անիկայ ինծի գայ , ու գիտ-
նայ թէ Իսրայէլի մէջ մարգարէ
9 կայ ։ Եւ Նէեման իր ձիերովը ու
կառքովը գնաց , ու Եղիսէին տա-
10 նը դուռը կայնեցաւ ։ Ու Եղիսէն
մարդ մը խրկեց անոր՝ ըսելով .
Գնա՛ ᶜՅորդանանու մէջ եօթը ան-
գամ լուացուէ , և մարմինդ քեզի
11 կը դառնայ , ու կը մաքրուիս ։ Ու
Նէեման բարկացաւ ու գնաց՝ ըսե-
լով . Ահա ես կ'ըսէի որ անիկայ
անտարակոյս իմ քովս պիտի գայ ,
ու կայնի , և իր Եհովայ Աստու-
ծոյն անունը պիտի կանչէ , ու ձեռ-
քը ան տեղւոյն վրայ պիտի երեր-
ցընէ , ու բորոտութիւնը բժշկէ ։
12 Դամասկոսի Աբանա ու Փարփար
գետերը Իսրայէլին բոլոր ջուրերէն
աղէկ չէ՞ն . միթէ չէ՞մ կրնար ա-
նոնց մէջը լուացուիլ ու մաքրուիլ .
և դարձաւ բարկութիւնով գնաց ։
13 Իսկ անոր ծառաները մօտեցան , ու
անոր խօսեցան ըսելով . Ով հայր ,
Թէ որ մարգարէն քեզի մէկ մեծ բան
մը ըսէր , պիտի չընէի՞ր . ո՜ւր
մնաց որ անիկայ քեզի՝ Լուացուէ
14 ու պիտի մաքրուիս՝ ըսաւ ։ Ան
ատենը անիկայ իջաւ , ու Աստու-
ծոյ մարդուն խօսքին համեմատ՝
եօթը անգամ Յորդանանու մէջ
լուացուեցաւ . ու ᵈանոր մարմինը
պզտիկ տղու մը մարմնին պէս
եղաւ , ու ᵉմաքրուեցաւ ։
15 Եւ անիկայ իր բոլոր բանակովը
Աստուծոյ մարդուն դարձաւ , ու
գնաց անոր առջեւը կայնեցաւ , ու
ըսաւ . Ահա՛ հիմա գիտցայ՝ որ բո-
լոր երկրի վրայ ᶠԱստուած չկայ ,
բայց միայն Իսրայէլի մէջ . ուստի
հիմա կ'աղաչեմ , քու ծառայէդ
16 ‡ընծա՛յ մը ընդունէ ։ Բայց անիկայ
ըսաւ . ᵍՏէրը՝ որուն առջեւը կը
կայնիմ , կենդանի է որ ʰպիտի չըն-
դունիմ . ու զանիկայ ստիպեց՝ որ
ընդունի . բայց անիկայ չհաճեցաւ ։
17 Ու Նէեման ըսաւ . Ուրեմն քու
ծառայիդ՝ ան երկու ջորիի բեռ հողէն երկու
ջորիի բեռ չտրուի՞ . քանզի քու
ծառադ մէյմըն ալ ուրիշ աս-
տուածներու ողջակէզ կամ զոհ
պիտի չընէ , բայց միայն Եհովային ։
18 Տէրը աս բանիս համար քու ծա-
ռայիդ թողութիւն տայ , այսինքն
երբոր իմ տէրս Ռեմոնի տունը
մտնէ հոն երկրպագութիւն ընելու
համար , և ⁱանոր իմ ձեռքիս վրայ
կռթընելովը , ես ալ Ռեմոնի տանը
մէջ ծռիմ , աս բանիս՝ այսինքն
Ռեմոնի տանը մէջ իմ ծռելուս
համար , Տէրը քու ծառայիդ թո-
19 ղութիւն տայ ։ Եւ Եղիսէ անոր
ըսաւ . Գնա՛ խաղաղութեամբ . և
անիկայ անոր քովէն գնաց , ու
ʲքիչ մը ճամբայ գնաց ։
20 Եւ Աստուծոյ մարդուն Եղիսէին
մանչը Գէեզին ըսաւ . Ահա՛ իմ
տէրս աս Ասորի Նէեմանին խնա-
յեց , ու անոր ձեռքէն՝ անոր բե-
րածը չառաւ . Տէրը կենդանի է որ
ես անոր ետեւէն կը վազեմ , և անկէ
21 բան մը կ'առնեմ ։ Ու Գէեզի
Նէեմանին ետեւէն վազեց . ու Նէե-
ման երբոր տեսաւ որ անիկայ իր
ետեւէն կը վազէ , իր կառքէն ի-
ջաւ զանիկայ դիմաւորելու , ու ը-
22 սաւ . Ողջութի՞ւն է ։ Եւ անի-
կայ ըսաւ . Ողջութիւն է . իմ
տէրս զիս խրկեց ու կ'ըսէ . Ահա՛
հիմա Եփրեմի լեռնէն մարգարէից
որդիներէն երկու մանչ եկաւ ին-
ծի . շնո՛րհք ըրէ , անոնց համար
տաղանդ մը արծաթ , ու երկու
23 ձեռք փոխելու հանդերձ տուր ։ Ու
Նէեման ըսաւ . Շնո՛րհք ըրէ՝ եր-
կու տաղանդ առ . և զանիկայ բըռ-

ᵃ Ա Թագ. Թ. 7, Գլ. Ը. 7, 9 ։
* Եբր. ըսե-լով ։
† Եբր. ահա՛ ։
ᵇ Ծն. Լ. 2 ։ Բ Օր. ԼԲ. 39 ։ Ա Թագ. Բ. 6 ։
ᶜ Յհ. Գլ. Թ. 41 ։ Յով. Թ. 7 ։

Ն. Ք. ԴՔ. Իրր 894
ᵈ Յոբ. ԼԳ. 25 ։
ᵉ Ղուկ. Դ. 27 ։
ᶠ Դան. Բ. 47 ։ Գ. 29 ։ Զ. 26, 27 ։
‡ Եբր. օրհնութիւն
ᵍ Ծն. ԼԳ. 11 ։
ʰ Գլ. Գ. 14 ։
ⁱ Ծն. ԺԴ. 23 ։ Տես Մատ. Ժ. 8 ։ Գործ. Ը. 18, 20 ։
ʲ Գլ. Է. 2, 17 ։
ᵏ Ծն. ԼԵ. 16 ։

Ն. Ք. ԴՔ. Իրր 894

նաղատեց . ու երկու պարկի մէջ
երկու տաղանդ արծաթ դրաւ , ու
երկու ձեռք ալ փոխելու հանդերձ
ծրարեց . և իր ծառաներէն երկու-
քին տուաւ , որ անոր առջևէն տա-
24 րին : Ու երբոր *բլուրը եկաւ , ա-
նոնց ձեռքէն առաւ , ու տանը մէջ
պահեց , և ան մարդիկները ճամ-
25 բեց , ու գացին . Եւ ինքը ներս
գնաց իր տիրոջը առջևը կայնեցաւ .
ու Եղիսէ անոր ըսաւ . Ո՛վ Գէեզի՝
ո՞ւսկից կու գաս . և անիկայ ըսաւ .
26 Ծառադ մէկ տեղ մը չգնաց : Ու
Եղիսէ անոր ըսաւ . Երբոր ան մար-
դը իր կառքէն քեզ դիմաւորելու
դարձաւ , մի՞թէ իմ հոգիս հետդ չը-
գնա՞ց . ու հիմա՞ արծաթ առնելու ,
և հանդերձներ , ու ձիթենիներ , և
այգիներ , ու ոչխարներ , և արջառ-
ներ , ու ծառաներ , ու աղախիններ
27 առնելու ատե՞նն է : Ուրեմն Նէե-
մանին բորոտութիւնը Բքեզի ու
քու սերունդիդ փակչի յաւիտեան :
Եւ անիկայ՝ անոր առջևէն Ծձիւնի
պէս բորոտեալ ելաւ :

* Կամ՝ առանձին տեղը

ա Տիմ. Զ. 10 :
Ծ Ել. Դ. 6 : Թուոց. ԺԲ. 10 : Գէ. ԺԵ. 5 :

## ԳԼ. Զ.

1 Եղիսէ հրամանն կու տայ մարգարէից որդիներուն՝ որ երթան իրենց բնակարանները մեծցընեն . ու երկաթը կը լողցընէ : 8 Եղիսէ՝ Ասորւոց թագաւորին խորհուրդը կը յայտնէ Իսրայէլի թագաւորին : 13 Եղիսէն բռնելու համար՝ Դոթայիմ խրկուած զօրքը կուրութեամբ կը զարնուին , 19 ու Սամարիա տարուելով՝ խաղաղութեամբ ետ կը խրկուին : 24 Սամարիայի մէջ պատահած սովին պատճառաւ՝ կնիկները իրենց զաւակները կ'ուտեն : 30 Թագաւորը մարդ կը խրկէ որ Եղիսէն սպաննէ :

Իրր 893
ա Գլ. Դ. 38 :

1 Ու ամարգարէից որդիքը Եղիսէին
ըսին . Ահա՛ աս տեղս՝ ուր որ
մենք քու առջևդ կը նստինք , մեզի
2 նեղ է : Երթանք ուրեմն մինչև
Յորդանան . ու ան տեղէն ամէն
մէկերնիս մէյմէկ գերան առնենք ,
ու հոն մեզի բնակելու տեղ շինենք .
3 Եւ անիկայ ըսաւ . Գացէք : Ու
անոնցմէ մէկը ըսաւ . Շնորհք ը-
րէ , քու ծառաներուդ հետ եկուր .
4 և անիկայ՝ Կու գամ՝ ըսաւ . Ու
անոնց հետ գնաց . և Յորդանան
5 հասնելով՝ ծառեր կտրեցին : Ու
երբոր մէկը գերան մը կը կտրէր ,
տապարին երկաթը ջուրին մէջը ին-
կաւ . ուստի անիկայ պոռալով ը-
սաւ . Ո՜հ , տէ՛ր իմ , ան ալ փոխ
6 առնուած էր : Եւ Աստուծոյ մար-
դը ըսաւ . Ո՞ւր ինկաւ . ու անի-
կայ ան տեղը ցուցուց անոր : Ու
Բ Եղիսէ փայտ մը կտրեց՝ ու հոն
նետեց . ու երկաթը ջուրին երեսը
7 ելաւ : Եւ անոր ըսաւ . Զանի՛կայ
վերցո՛ւր . ան ալ ձեռքը երկընցուց ,
ու զանիկայ առաւ :

Բ Տես Գլ. Բ. 21 :

8 Եւ Ասորւոց թագաւորը՝ Իսրա-
յէլի դէմ պատերազմ կ'ընէր . ու
իր ծառաներուն հետ խորհուրդ ը-
րաւ , ու ըսաւ . Այս ինչ կամ այն
9 ինչ տեղը բանակ դնեմ : Եւ Աս-
տուծոյ մարդը Իսրայէլի թագաւո-
րին մարդ խրկեց՝ ըսելով . Զգու-
շացի՛ր , որ ան տեղէն չանցնիս .
վասն զի Ասորիները հոն իջած են :
10 Ու Իսրայէլի թագաւորը Աստուծոյ
մարդուն ըսած տեղը մարդ խրկե-
լով՝ տեղեկացաւ , ու անկէ զգու-
11 շացաւ † շատ անգամ : Եւ աս բա-
նիս համար Ասորւոց թագաւորին
սիրտը նեղանալով՝ իր ծառաները
կանչեց , ու անոնց ըսաւ . Չէ՞ք
յայտներ ինծի , թէ մերիններէն
ո՛վ կայ որ Իսրայէլի թագաւորին
12 կողմն է : Ու ծառաներուն մէ-
կը ըսաւ . Չկայ անանկ մէկը՝ ով տէր
իմ թագաւոր . հապա Իսրայէլի
մէջ եղող Եղիսէ մարգարէն՝ քու
պառկելու սենեակիդ մէջը խօսած
խօսքերդ Իսրայէլի թագաւորին կը
13 յայտնէ : Եւ անիկայ ըսաւ . Գա-
ցէ՛ք , ու անոր ուր ըլլալը տեսէ՛ք ,
որ զանիկայ բռնել տամ : Եւ ա-
նոր պատմեցին , ու ըսին . Ահա՛ ա-
նիկայ ե Դոթայիմի մէջ է :
14 Ուստի անիկայ՝ ձիեր , ու կառ-
քեր , ու բազմաթիւ զօրքեր խրկեց
հոն , որոնք գիշերով գացին , և
15 քաղաքը պաշարեցին : Եւ Աս-
տուծոյ մարդուն ծառան առաւօ-
տուն կանուխ ելաւ , ու դուրս գը-
նաց . և ահա՛ զօրքեր , ձիեր ու
կառքեր՝ քաղաքը պաշարեր էին .
ու մանչը անոր ըսաւ . Ո՛հ , տէ՛ր
16 իմ , ի՞նչ ընենք : Ու Եղիսէ ը-
սաւ . Մի՛ վախնար . քանզի Դ մեզի
հետ եղողները՝ անոնց հետ եղողնե-
17 րէն շատուոր են : Ու Եղիսէ աղօթք
ըրաւ ու ըսաւ . Ո՛վ Տէր՝ ասոր աչ-
քերը բա՛ց որ տեսնէ : Եւ Տէրը
մանչուն աչքերը բացաւ . ու տե-
սաւ որ ահա՛ լեռը՝ Եղիսէին չորս
կողմը Ե հրեղէն ձիերով ու կառքե-
18 րով լեցուն էր : Ու երբոր անոնք
Եղիսէին քովը իջան , Եղիսէ Տէրոջը
աղօթք ըրաւ , ու ըսաւ . Կ'աղա-
չեմ , աս ազգը ‡ կուրութեամբ
զա՛րկ . և Զ Տէրը զանոնք կուրու-
թեամբ զարկաւ՝ Եղիսէին խօսքին
19 համեմատ : Ան ատենը Եղիսէ ա-
նոնց ըսաւ . Ճամբան աս չէ , ու
քաղաքը ասիկայ չէ . ետևէս եկէ՛ք՝
որ ձեզ ձեր փնտռած մարդուն տա-
նիմ . և զանոնք Սամարիա տարաւ :
20 Ու երբոր Սամարիա եկան , Եղիսէ
ըսաւ . Ո՛վ Տէր՝ ասոնց աչքերը
բա՛ց որ տեսնեն : Եւ Տէրը անոնց
աչքերը բացաւ , ու տեսան . և ա-
հա՛ Սամարիայի մէջ էին :
21 Եւ Իսրայէլի թագաւորը զանոնք

Ն. Ք. ԴՔ. Իրր 893

† Եբր. ո՛չ մէկ ու ո՛չ երկու

ե Ծն. ԼԷ. 17 :

Դ Բ Մն. ԼԲ. 7 : Սաղ. ԾԵ. 18 : Հռով. Ը. 31 :

Ե Գլ. Բ. 11 : Սաղ. ԼԴ. 7 : ԿԸ. 17 : Զաք. Ա. 8 : Զ. 1—7 :

‡ Կամ՝ շլացութեամբ

Զ Ծն. ԺԹ. 11 :

Ն. Ք. Ա. Ք.
Իսր 893

տեսնելով՝ Եղիսէին ըսաւ. Ո՛վ
22 հայր իմ՝ զարնե՞մ, զարնե՞մ ։ Եւ
անիկայ ըսաւ. Մի՛ զարներ. միթէ
քու սրովդ ու աղեղովդ գերի բռնածներդ կը զարնե՞ս. ᵃանոնց առ-
ջին հաց ու ջուր դիր, որ ուտեն
խմեն, ու իրենց տիրոջը երթան ։
23 Եւ անոնց՝ մէկ մեծ կոչունք մը ըրաւ. ու կերան խմեցին. ու զանոնք ետ խրկեց. ու իրենց տիրոջը
գացին. և ᵇԱսորւոց գունդերը
մէյմըն ալ Իսրայէլի երկիրը չեկան ։

ᵃ Հռովմ. ժբ. 20։
ᵇ Գլ. ե. 2։ Հմր 3. 9։

Իսր 892

24 Եւ անկէ ետքը՝ Ասորւոց Բենադադ թագաւորը իր բոլոր բանակը
ժողվեց, ու ելաւ Սամարիան պա-
25 շարեց ։ Եւ Սամարիայի մէջ մեծ
սով եղաւ, քանզի զանիկայ պաշարեր էին, այնպէս որ մէկ իշու գլուխը՝ ութսուն սիկղ արծաթի, ու մէկ
կապիճին չորրորդ մասը աղաւնիի
աղբը՝ հինգ սիկղ արծաթի ծախուե-
26 ցաւ ։ Ու երբոր Իսրայէլի թագաւորը պարսպին վրայէն կ՚անցնէր,
մէկ կնիկ մը անոր աղաղակեց ու
ըսաւ. Ո՛վ տէր իմ թագաւոր՝
27 օգնէ ինծի ։ Եւ անիկայ ըսաւ. Թէ
որ Տէրը քեզի չօգնէ, ես քեզի
ուսկից օգնեմ, կալէ՞ն թէ հնձա-
28 նէն ։ Ու թագաւորը անոր ըսաւ.
Քեզի ի՞նչ եղաւ ։ Եւ անիկայ
ըսաւ. Աս կնիկը ինծի ըսաւ որ՝
Քու տղադ տուր, ու այսօր զանիկայ ուտենք, և իմ տղաս վաղը
29 ուտենք ։ Ուստի ᶜիմ տղաս եփեցինք, և զանիկայ կերանք. ու երկրորդ օրը անոր ըսի. Տղադ տուր
որ ուտենք. բայց անիկայ իր տղան
30 պահեց ։ Եւ թագաւորը այն կնկանը խօսքը լսածին պէս՝ ᵈիր հանդերձները պատռեց, ու պարսպին
վրայէն անցած ատենը, ժողովուրդը տեսաւ որ, ահա ներսէն՝ անոր
31 մարմնոյն վրայ քուրձ կար ։ Եւ
անիկայ ըսաւ. ᵉԱստուած ինծի
այսպէս՝ ու ասկէ աւելի ընէ, թէ
որ այսօր Սափատեան Եղիսէին
32 գլուխը իր վրայ մնայ ։ Ու Եղիսէ իր
տունը կը նստէր, ու ᶠծերերը անոր
հետ կը նստէին. և թագաւորը իր
առջևէն մարդ մը խրկեց անոր. ու
խրկուած մարդը դեռ չեկած՝ Եղիսէն ծերերուն ըսաւ. ᵍԿը տեսնէ՞ք որ աս ʰմարդասպանի որդին
գլուխս առնելու մարդ խրկեց. նայեցէ՛ք, այն մարդը եկածին պէս՝
դուռը գոցեցէ՛ք, ու զանիկայ դրանը քովը բռնեցէ՛ք. միթէ անոր
տիրոջը ոտքերուն ձայնը անոր
33 ետևէն չէ՞ ։ Ու երբոր անոնց հետ
կը խօսէր, ահա այն խրկուած մարդը անոր քովը իջաւ, ու ըսաւ.
Ահա աս չարիքը Տէրոջմէն է. ⁱալ

ᶜ Ղև. իզ. 29։ Բ Օր. իը. 53, 57։
ᵈ Գ Թագ. իա. 27։
ᵉ Հռութ. ա. 17։ Գ Թագ. ժթ. 2։
ᶠ Եզեկ. ը. 1։ ի. 1։
ᵍ Ղուկ. ժգ. 32։
ʰ Գ Թագ. ժը. 4։
ⁱ Յոբ. բ. 9։

ասկէ ետև Տէրոջմէն ի՞նչ պիտի
յուսամ ։

Ն. Ք. Ա. Ք.
Իսր 892

ԳԼ. Է

1 Եղիսէ Սամարիայի մէջ պատահելու անհաւատալի առատութիւնը կը նախածայնէ ։ 3 Չորս բորոտներ համարձակութիւն ընելով Ասորւոց բանակը մտնելու, անոնց փախչելուն լուրը կը բերեն ։ 12 Թագաւորը լրտեսներու միջոցով այն լուրին ճշմարիտ ըլլալը ստուգելով՝ Ասորւոց վրանները կը կողոպտէ ։ 17 Այն իշխանը՝ որ առատութեան համար Եղիսէին ըրած մարգարէութեանը չհաւատաց, դրան պահպանութիւնը իրեն յանձնուած ըլլալով՝ ամբոխէն ոտնակոխ կ՚ըլլայ ու կը մեռնի ։

1 Ու Եղիսէ ըսաւ. Տէրոջը խօսքը
մտիկ ըրէք. Տէրը այսպէս կ՚ըսէ. ᵃՎաղը աս ատենս Սամարիայի
դրանը մէջ՝ մէկ գրիւ բարակ ալիւրը՝ մէկ սիկղ արծաթի, ու երկու
գրիւ գարին՝ մէկ սիկղի պիտի ծա-
2 խուի ։ ᵇԵւ այն զօրապետը՝ որուն
ձեռքին վրայ թագաւորը կը կռթընէր, Աստուծոյ մարդուն պատասխան տուաւ՝ ու ըսաւ. ᶜԹէ
որ Տէրը երկինքը պատուհաններ
ալ ընէ, միթէ ատիկայ ըլլալու
բան է ։ Եւ անիկայ ըսաւ. Դուն
քու աչքերովդ պիտի տեսնես, բայց
անկէ պիտի չուտես ։
3 Ու ᵈդրանը առջևը չորս բորոտ
մարդիկներ կային. և անոնք իրարու ըսին. Ինչո՞ւ հոս նստինք մին-
4 չև որ մեռնինք. Թէ որ ըսենք՝ թէ
քաղաքը մտնենք, քաղաքին մէջ
սով կայ, ու հոն պիտի մեռնինք,
և թէ որ հոս մնանք, նոյնպէս պիտի մեռնինք. ուրեմն եկէ՛ք Ասորւոց բանակը դիմենք. թէ որ մեզ
ողջ թողուն՝ կ՚ապրինք, ու թէ որ
5 մեզ մեռցընեն՝ կը մեռնինք ։ Եւ
մութ ատեն ելան որ Ասորւոց բանակը երթան. ու մինչև Ասորւոց
բանակին ծայրը գացին. և ահա
6 հոն մարդ մը չկար. Քանզի Տէրը
Ասորւոց բանակին մէջը՝ ᵉկառքերու ձայն, ու ձիերու ձայն, մէկ
մեծ զօրքի մը ձայն լսել տուաւ. և
իրարու ըսին. Ահա Իսրայէլի թագաւորը՝ ᶠՔետացւոց թագաւորները ու Եգիպտացւոց թագաւորները վարձքով բռնեց որ մեր վրայ
7 գան ։ Ու ᵍելան մութին փախան. և իրենց վրանները, ու
ձիերը, ու էշերը, ու բանակը եղածին պէս՝ թողուցին, ու իրենց
անձը ազատելու համար փախան ։
8 Եւ աս բորոտները մինչև բանակին
ծայրը գացին, ու մէկ վրան մը
մտնելով՝ կերան ու խմեցին. և
անկէ արծաթ, ու ոսկի, ու հանդերձներ վերցուցին, ու գացին
պահեցին. ու ետ դառնալով՝ մէկ
ուրիշ վրան մը մտան, և անկէ
ալ վերցուցին, ու գացին պահե-
9 ցին ։ Ետքը իրարու ըսին. Աղէկ

ᵃ Հմր 18, 19։
ᵇ Հմր 17, 19, 20։ Տեսիլ. ե. 18։
ᶜ Մաղ. գ. 10։
ᵈ Ղև. ժգ. 46։
ᵉ Բ Թագ. ե. 24։ Գլ. զ. 17։ Յոբ. ժե. 21։
ᶠ Գ Թագ. ժ. 29։
ᵍ Սաղ. խը. 4, 5, 6։ Առակ. իը. 1։

Ն․ Ք․ ԳՐ․
Իրր 892

* Եբր․ անօրէնութիւնը մեզ պիտի գտնէ․

չէ մեր ըրածը․ աս օրս աւետեաց
օր է, ու մենք լուռ կեցեր ենք․ թէ
որ մինչեւ առաւօտեան լոյսը սպա-
սենք, *մեր անօրէնութեանը պա-
տիժը պիտի կրենք"․ ուստի հիմա
եկէք երթանք, ու թագաւորին
10 տունը պատմենք։ Եւ գացին քա-
ղաքին դռնապանին պոռացին, ու
անոնց պատմեցին ու ըսին․ Մենք
Ասորւոց բանակը մտանք․ եւ ահա
հոն մարդ՝ կամ մարդու ձայն չկայ,
բայց միայն ձիերը կապուած, ու է-
շերը կապուած, ու վրաններն ալ
11 այնպէս ինչպէս էին։ Եւ դռնապան-
ները պոռացին, ու թագաւորին
տանը ներսը իմացուցին։
12 Ու թագաւորը գիշերով ելաւ,
եւ իր ծառաներուն ըսաւ․ Ասորի-
ներուն մեզի ըրած բանը ես ձեզի
պատմեմ․ անոնք մեր անօթի ըլ-
լալը գիտնալով՝ բանակէն ելած
են, ու դաշտին մէջը պահուած
են՝ ըսելով․ Երբոր անոնք քաղա-
քէն դուրս ելլեն, զանոնք ողջ
13 բռնենք, ու քաղաքը մտնենք։ Եւ
անոր ծառաներուն մէկը պատաս-
խան տուաւ՝ ու ըսաւ․ Թող մնա-
ցած ձիերուն հինգը առնեն, որոնք
հոս մնացած են․ ահա անոնք բոլոր
Իսրայէլին բազմութեանը պէս ե-
ղան, [որոնք հոս մնացած են․
ահա անոնք բոլոր Իսրայէլին բազ-
մութեանը պէս եղան,] որ հատ-
նելու վրայ է․ եւ հոն խրկենք ու

† Կառք՝ եր-
կու զոյգ
ձիեր առին․

14 տեսնենք։ Ու †երկու կառք առին
իրենց ձիերովը"․ եւ թագաւորը
Ասորւոց բանակին ետեւէն խրկեց՝
15 ու ըսաւ Գացէք նայեցէք։ Ու
անոնք մինչեւ Յորդանան՝ անոնց
ետեւէն գացին․ եւ ահա բոլոր ճամ-
բան լեցուն էր հանդերձներով ու
ամաններով՝ որոնք Ասորիները աճ-
տորալով փախած ատեննին ձգեր
էին։ Եւ պատգամաւորները ետ
դարձան ու թագաւորին պատմե-
ցին։
16 Ան ատենը ժողովուրդը ելաւ, ու
Ասորւոց բանակը կողոպտեց․ ու

ը Հմր 1․

ըՏէրոջը խօսքին համեմատ՝ մէկ
գրիւ բարակ ալիւրը՝ մէկ սիկղ ար-
ծաթի, ու երկու գրիւ գարին մէկ

‡ Եբր․ ե-
ղաւ․

17 սիկղի ‡ծախուեցաւ։ Եւ թա-
գաւորը դրանը վերակացու դրա-
ան զօրապետը՝ որուն ձեռքին
վրայ ինքը կը կռթնէր․ ու ժո-
ղովուրդը դրանը մէջ զանիկայ

ի Գլ․ Է․ 32․
Հմր 2․

կոխկռտեցին, ու մեռաւ, իԱս-
տուծոյ մարդուն խօսքին համե-
մատ՝ որ խօսեր էր, թագաւորը
18 անոր քովը իջած ատենը։ Ու ե-
ղաւ՝ ինչպէս որ Աստուծոյ մարդը
թագաւորին խօսեր էր՝ ըսելով․

ծ Հմր 1․

ծԿարը աս ատենս Սամարիայի
դրանը մէջ երկու գրիւ գարին՝ մէկ
սիկղ արծաթի, ու մէկ գրիւ բարակ
ալիւրը՝ մէկ սիկղի պիտի ծախուի,
19 Եւ ան զօրապետը Աստուծոյ մար-
դուն պատասխան տուեր ու ըսեր
էր․ Թէ որ Տէրը երկինքը պա-
տուհաններ ալ շինէ, միթէ ատի-
կայ ըլլալու բան է․ ու Աստուծոյ
մարդը ըսեր էր․ Ահա դուն քու
աչքերովդ պիտի տեսնես, բայց ան-
20 կէ պիտի չուտես․ Այսպէս եղաւ
անոր․ քանզի ժողովուրդը զանի-
կայ դրանը մէջ կոխկռտեցին, ու
մեռաւ։

## ԳԼ․ Ը

1 Սունամացի կնիկը սովին պատճառաւը եօթը տարի իր երկրէն կը հեռանայ․ իսկ թագաւորը Եղիսէին հրաշքներուն պատմութիւնը լսելով ետ կու տայ անոր կալուածքը․ 7 Ազայէլ՝ Բենադադէն ընծայով մը Եղիսէին խրկուելով Դամասկոսի մէջ, անոր մարգարէութիւնը լսելէն ետեւ՝ իր տէրը կը մեռցնէ ու անոր տեղը կ՚անցնի․ 16 Յուդայի Յովրամ թագաւորին չար վարմունքը․ 20 Եդովմ ու Լեբնան կ՚ապստամբին․ 23 Ոքոզիաս՝ Յովրամին տեղը կը յաջորդէ․ 25 Ոքոզիային չար վարմունքը․ 28 Անիկայ Յեզրայէլ կ՚երթայ՝ վիրաւորուած Յովրամին տեսութիւն ընելու․

Ն․ Ք․ ԳՐ․
Իրր 892

1 Ու Եղիսէ խօսեցաւ ան կնկանը,
աորուն տղան ողջընցուցեր էր,
ու ըսաւ․ Ելիր դուն քու ընտա-
նիքովդ գնա․ եւ ուր որ կրնաս
հոն պանդխտութիւն ըրէ․ վասն
զի Տէրը բսովը կանչեց․ եւ ահա կու
գայ՝ եօթը տարի աս երկրիս վրայ

Իրր 891
ա Գլ․ Դ․ 85․

բ Սաղ․ ճե․
16․ Անգ․ ԺԱ․ 11․

2 բ... Ու ան կնիկը ելաւ, ու
Աստուծոյ մարդուն ըսածին պէս
ըրաւ․ եւ ինքը իր ընտանիքովը գը-
նաց՝ ու Փղշտացւոց երկրին մէջ
եօթը տարի պանդխտութիւն ը-
րաւ․
3 Ու եօթը տարին լմննալէն ետ-
քը՝ ան կնիկը Փղշտացւոց երկրէն
դարձաւ եւ իր տանը համար ու իր
արտին համար թագաւորին բողո-
քելու գնաց։

Իրր 885

4 Ու թագաւորը Աստուծոյ մար-
դուն մանչուն գԳեեզիին հետ խօ-
սեցաւ՝ ու ըսաւ․ Եղիսէին ըրած
բոլոր մեծ գործերը ինծի պատմէ՛։

գ Գլ․ Ե․ 27․

5 Ու երբոր անիկայ թագաւորին կը
պատմէր, թէ ինչպէս անիկայ դմե-
ռած տղան ողջընցուց ահա ան
կնիկը որուն տղան ողջընցուցեր
էր, իր տանը համար եւ իր արտին
համար թագաւորին կը բողոքէր․
ու Գեեզի ըսաւ Ով տէր իմ թա-
գաւոր աս է ան կնիկը, ու աս
է անոր տղան՝ որն որ Եղիսէն ող-

դ Գլ․ Դ․ 85․

6 ջընցուց։ Եւ թագաւորը կնկանը
հարցուց․ ու անիկայ անոր պատ-
մեց։ Ու թագաւորը մէկ ներքինի
մը տուաւ անոր, ու ըսաւ․ Անոր
ամէն ստացուածքը, նաեւ երկիրը

Ն. Ք. Գ. Ք. Տար 885

885

Թողած օրէն մինչև հիմա իր արտին
բոլոր արդիւնքը իրեն դարձուր ։
7 Ու Եղիսէ Դամասկոս գնաց ։
Եւ Ասորւոց Բենադադ թագաւորը
հիւանդացեր էր . ու անոր պատ-
մեցին ու ըսին թէ՝ Աստուծոյ
8 մարդը հոս եկաւ ։ Եւ թագա-
ւորը ե Ազայէլին ըսաւ . Զ Ձեռքդ
ընծայ առ, ու գնա Աստուծոյ
մարդը դիմաւորէ, ու ե անոր մի-
ջոցով Տէրոջը հարցուր, թէ ար-
դեօք աս հիւանդութենէս պիտի
9 առողջանամ ։ Եւ Ազայէլ զանի-
կայ դիմաւորելու գնաց . ու ձեռ-
քը ընծայ առաւ, այսինքն Դա-
մասկոսի բոլոր բարիքներէն քառ-
սուն ուղտ բեռնաւորած, ու գնաց
և անոր առջևը կայնեցաւ՝ ու ը-
սաւ . Քու որդիդ Ասորւոց Բենա-
դադ թագաւորը զիս քեզի խրկեց՝
ըսելով . Արդեօք աս հիւանդու-
10 թենէս պիտի առողջանամ ։ Ու
Եղիսէ անոր ըսաւ . Գնա՛ անոր
ըսէ . Անշուշտ պիտի առողջանաս .
բայց Տէրը ինծի ցուցուց, որ է ա-
11 նիկայ անշուշտ պիտի մեռնի ։ Եւ
աչքերը անթարթափ կերպով տըն-
կեց, մինչև որ անիկայ ամչցաւ . ու
12 Աստուծոյ մարդը Է լացաւ ։ Եւ
Ազայէլ ըսաւ . Իմ՛ տէրս ինչո՞ւ կու
լայ ։ Ու անիկայ ըսաւ . Անոր
համար որ՝ ծ Իսրայէլի որդւոցը ը-
նելու չարութիւնդ գիտեմ . ա-
նոնց ամրոցները կրակով պիտի այ-
րես, ու անոնց կտրիճները սրով
պիտի մեռցընես, և է անոնց պզտիկ
տղաքը գետինը պիտի զարնես, ու
13 յղի կնիկները պիտի ճեղքես ։ Եւ
Ազայէլ ըսաւ . Քու ծառադ ի՞նչ
է շուն է, որ աս մեծ բաները ընէ ։
Ու Եղիսէ ըսաւ . Է Տէրը ինծի ցու-
ցուց, որ դուն Ասորւոց վրայ թա-
14 գաւոր պիտի ըլլաս ։ Եւ անիկայ
Եղիսէէն քովէն ելաւ, ու իր տի-
րոջը գնաց . ու անիկայ անոր ը-
սաւ . Եղիսէն քեզի ի՞նչ ըսաւ .
և անիկայ ըսաւ . Ինծի ըսաւ որ՝
15 անշուշտ պիտի առողջանաս ։ Ու
հետևեալ օրը՝ անիկայ *հաստ լաթ"
մը առաւ, ջուրը թաթխեց, ու
անոր երեսին վրայ փռեց . և անի-
կայ մեռաւ . ու Ազայէլ անոր տե-
ղը թագաւոր եղաւ ։

892

16 Եւ Իսրայէլի թագաւորին Ա-
քաաբեան Յովրամին հինգերորդ
տարին՝ երբոր Յովսափատ դեռ
Յուդայի վրայ կը թագաւորէր,
Յուդայի Յովսափատ թագաւորին
որդին ծ Յովրամը թագաւոր եղաւ .
17 Է Անիկայ երեսուներկու տարեկան
էր՝ երբոր թագաւոր եղաւ, ու Ե-
րուսաղէմի մէջ ութը տարի թա-
18 գաւորութիւն ըրաւ ։ Եւ Անիկայ

Է գ Թագ. ժթ. 15 ։ Ղ Թագ. Թ. 7 ։ գ Թագ. ժդ. 3 ։ Գէ. Ա. 5 ։ Է Գէ. Ա. 2 ։ Է Հմր 15 ։ Է Ղու. ժթ. 41 ։ Ծ Գէ. Ժ. 32 ։ ժբ. 17 ։ ժգ. 3. 7 ։ Ամով. Ա. 3 ։ Է Գէ. ժե. 16 ։ Ովս. ժգ. 16 ։ Ամով. Ա. 13 ։ Ա Թագ. ժէ. 43 ։ Է գ Թագ. ժթ. 15 ։ * Կամ՝ վերմակ ։ Ծ Բ Մն. Իա. 3, 4 ։ Է Բ Մն. Իա. 5, 6 ։

Աքաաբին տանը ըրածին պէս՝ Իս-
րայէլի թագաւորներուն ճամբան
բռնեց . քանզի Է Աքաաբին աղջիկը
անոր կնիկ եղաւ . ու անիկայ Տէ-
րոջը առջևը չարութիւն ըրաւ ։
19 Սակայն Տէրը Յուդան կորսնցը-
նել չուզեց, իր Դաւիթ ծառային
սիրոյն համար Է ինչպէս որ անոր
խօսք տուեր էր, որ Բէ անոր և Բէ
անոր որդւոցը միշտ մէկ ճրագ մը
տայ ։
20 Անոր օրերը՝ Ղ Եդովմայեցիք Յու-
դայի ձեռքին տակէն ապստամբե-
ցան, ճ ու իրենց վրայ թագաւոր մը
21 դրին ։ Ու Յովրամ իր բոլոր կառ-
քերը հետը առաւ, ու Սայիր ան-
ցաւ . և գիշերով ելաւ, ու իր չորս
կողմը առնող Եդովմայեցիները ու
կառքերու իշխանները զարկաւ . և
ժողովուրդը իրենց վրանները փա-
22 խան ։ Մ Բայց Եդովմայեցիք՝ Յու-
դայի ձեռքին տակէն ապստամբե-
ցան մինչև աս օրս ։ Յ Ան ատենը
Լեբնան ալ ապստամբեցաւ ։
23 Եւ Յովրամին մնացորդ պատ-
մութիւնը, ու բոլոր ըրածները՝ ա-
հա Յուդայի թագաւորներուն յի-
շատակաց գրքին մէջը գրուած է ։
24 Ու Յովրամ իր հայրերուն հետ
քնացաւ, ու իր հայրերուն հետ
Դաւիթի քաղաքին մէջը թաղուե-
ցաւ . և անոր որդին Ն † Ոքոզիան
անոր տեղը թագաւոր եղաւ ։
25 Իսրայէլի Աքաաբեան Յովրամ
թագաւորին երկոտասաներորդ տա-
րին՝ Յուդայի Յովրամ թագաւո-
րին որդին Ոքոզիան թագաւոր ե-
26 ղաւ ։ Ոքոզիա քսանուերկու տա-
րեկան էր, Ն երբոր թագաւոր ե-
ղաւ, ու Երուսաղէմի մէջ մէկ տա-
րի թագաւորութիւն ըրաւ . և ա-
նոր մօրը անունը Գոթողիա էր, որ
Իսրայէլի Ամրի թագաւորին աղ-
27 ջիկն էր ։ Ն Եւ անիկայ Աքաաբին
տանը ճամբուն մէջ քալեց, ու
Աքաաբին տանը պէս՝ Տէրոջը առ-
ջևը չարութիւն ըրաւ . քանզի Ա-
28 քաաբին տանը փեսան էր ։ Եւ
անիկայ Ղ Աքաաբեան Յովրամին
հետ՝ Ասորւոց Ազայէլ թագաւո-
րին վրայ Ռամովթ Գաղաադը գը-
նաց պատերազմելու համար . և
Ասորիք Յովրամը վիրաւորեցին ։
29 Եւ Է Յովրամ թագաւորը դարձաւ
որ Յեզրայէլի մէջ բժշկուի անվէր-
քերէն՝ որ Ասորիները անոր տուեր
էին ‡ Ռամովթի մէջ, Ասորւոց
Ազայէլ թագաւորին հետ պատե-
րազմ ըրած ատենը . ու Յուդայի
թագաւորը Յովրամի որդին Ոքո-
զիան Յեզրայէլ իջաւ, Աքաաբին
որդին Յովրամը տեսնելու համար .
քանզի անիկայ հիւանդ էր ։

Ն. Ք. Գ. Ք. 892

Է Հմր 26 ։ Յ Բ Թագ. Է. 13 ։ Գ Թագ. ժա. 36 ։ ժե. 4 ։ Բ Մն. Իա. 7 ։ Ղ Ծն. Իէ. 40 ։ Բ Մն. Իա. 8, 9, 10 ։ Ճ Գ Թագ. Իբ. 48 ։ Մ Ծն. Իէ. 40 ։ Յ Բ Մն. Իա. 10 ։

885

Ն Բ Մն. Իբ. 1 ։ † Բ Մն. Իբ. 6 Կոչի Ազարիա, Իբ Մն. Իա. 17 և Իե. 23 Կոչի Յովաքազ ։ Ն Տես Բ Մն. Իբ. 2 ։ Տես Հմր 15 ։ Ն Բ Մն. Իբ. 3, 4 ։

884

Ղ Բ Մն. Իբ. 5 ։ Է Դէ. Թ. 15 ։ Հմր 28 ։ ‡ Եբր Ռամայի ։ Դէ. Թ. 16 ։ Բ Մն. Իբ. 6, 7 ։

Ն․ Ք․ ԴՔ
884

Ն․ Ք․ ԴՔ․
884

## ԳԼ․ Թ

*1 Եղիսէ մարգարէից որդիներէն մէկը պատուէրներով կը խրկէ, որ Յէուն թագաւոր օծէ Ռամովթ Գաղաադի մէջ ։ 4 Անիկայ ալ իրեն ապսպրուած գործքը կատարելէն ետքը կը փախչի ։ 11 Զինուորները թագաւոր կը նստեցնեն Յէուն, որ Նաբովթին արտին մէջ Յովրամը կը մեռցնէ ։ 27 Ոքոզիա՝ Գուրի մէջ կը մեռցուի, ու Երուսաղեմի մէջ կը թաղուի ։ 30 Հպարտ Յեզաբէլը պատուհանէ մը վար ձգուելով՝ շուներուն կերակուր կ'ըլլայ ։*

ա Գ Թագ․ Ի․ 35 ։
բ Գլ․ Դ․ 29 ։ Երեմ․ Ա․ 17 ։
գ Գլ․ Ը․ 28, 29 ։
դ Հմր 5, 11 ։
ե Գ Թագ ԺԹ․ 16 ։

1 Ու Եղիսէ մարգարէն ա մարգարէից որդիներուն մէկը կանչեց,
ու անոր ըսաւ․ բ Գօտիդ մէջքդ
կապէ, ու աս եղին շիշը ձեռքդ
առ, գ և Ռամովթ Գաղաադը գնա ։
2 Ու երբոր հոն երթաս, Նամեսսեան
Յովսափատին որդին Յէուն գտիր,
ու մտնելով՝ զանիկայ դ իր եղբայրներուն
մէջէն վերցուր, և զանիկայ
3 ներքին սենեակ մը տար․ Ու ե եղին
շիշը առ, և անոր գլուխը թափէ,
ու ըսէ․ Տէրը այսպէս կ'ըսէ․ Քեզ
Իսրայէլի վրայ թագաւոր օծեցի․
ու դուռը բանաս՝ ու փախչելու
4 չուշանաս ։ Եւ ան մանչը՝ ան նորահաս
մարգարէն՝ Ռամովթ
Գաղաադը գնաց ։
5 Ու երբոր հոն հասաւ, աչա զօրաց
իշխանները նստեր էին․ և անիկայ
ըսաւ․ Ով իշխան, քեզի
խօսք մը ունիմ․ ու Յէու ըսաւ․
Մեր ամենէն որո՞ւն ու անիկայ
6 ըսաւ․ Քեզի՝ ով իշխան ։ Եւ
Յէու ելաւ՝ ներս մտաւ․ ու անիկայ
եղը անոր գլուխը թափեց, ու
անոր ըսաւ․ զ Իսրայէլին Տէր Աստուածը
այսպէս կ'ըսէ․ Քեզ Տէրոջը
ժողովուրդին՝ Իսրայէլին վրայ
7 թագաւոր օծեցի․ Եւ քու տիրոջդ
Աքաաբին տունը զարնես, որ իմ
ծառաներուս՝ մարգարէներուն արիւնին
համար, ու Տէրոջը բոլոր
ծառաներուն արիւնին համար,
է Յեզաբէլին ձեռքէն վրէժ առնեմ ։
8 Ու Աքաաբին բոլոր տունը բնաջինջ
պիտի ըլլայ և Աքաաբին ը բոլոր
էրիկ մարդիկները, ու թ Իսրայէլի
մէջ գոցուածը ու ձգուածը ժ պիտի
9 կորսնցնեմ ։ Եւ Աքաաբին տունը
Նաբատի որդւոյն ի Յերոբովամին
տանը պէս՝ ու Աքիայի որդւոյն
լ Բաասայի տանը պէս պիտի ընեմ
10 ։ խ Ու Յեզաբէլը՝ Յեզրայէլի
արտաքին մէջ շուները պիտի ուտեն,
ու զանիկայ թաղող պիտի
չըլլայ ։ Ետքը դուռը բացաւ, ու
փախաւ ։
11 Եւ Յէու իր տիրոջը ծառաներուն
եկաւ․ ու անոր ըսին․ Ողջութի՞ւն
է․ ծ աս անմիտը ինչո՞ւ քեզի
եկաւ ։ Եւ անիկայ անոնց ըսաւ․
Դուք ան մարդը, ու անոր խօսքերը
12 գիտէք ։ Եւ անոնք ըսին․ սուտ

զ Գ Թագ․ ԺԹ․ 16 ։ Բ Մն․ ԻԲ․ 7 ։
է Գ Թագ․ ԺԸ․ 4 ։ ԻԱ․ 15 ։
ը Ա Թագ․ ԻԵ․ 22 ։
թ Բ Օր․ ԼԲ․ 36 ։
ժ Գ Թագ․ ԺԴ․ 10 ։ ԻԱ․ 21 ։
ի Գ Թագ․ ԺԵ․ 29 ։ ԻԱ․ 22 ։
լ Գ Թագ․ ԺԶ․ 3, 11 ։
խ Գ Թագ․ ԻԱ․ 23 ։ Հմր 35, 36 ։
ծ Երեմ․ ԻԹ․ 26 ։ Յովհ․ Ժ․ 20 ։ Գործ ԻԶ․ 24 ։ Ա Կոր․ Դ․ 10 ։

է․ պատմէ՛ մեզի հիմա․ ան ալ ըսաւ․
Անիկայ ինծի այսպէս ու
այսպէս խօսեցաւ՝ ըսելով․ Տէրը
այսպէս կ'ըսէ․ Քեզ Իսրայէլի վրայ
13 թագաւոր օծեցի ։ Ան ատենը
շուտով կ ամէն մարդ իր հանդերձը
առաւ, ու սանդուխին գլխուն վրայ՝
անոր տակը դրին, ու փող
հնչեցնելով՝ ըսին․ Յէուն թագաւոր
14 եղաւ ։ Այսպէս Նամեսսեան
Յովսափատին որդին Յէուն՝ Յովրամին
դէմ գլուխ վերցուց ։ (Իսկ
Յովրամ բոլոր Իսրայէլի հետ Ասորւոց
Ազայէլ թագաւորին երեսէն
Ռամովթ Գաղաադը կը պահպանէր․
15 Սակայն հ Յովրամ թագաւորը՝
Ասորւոց Ազայէլ թագաւորին
հետ պատերազմ ըրած ատենը՝ Ասորիներուն
տուած վէրքերէն առողջանալու
համար՝ Յեզրայէլ
դարձեր էր ։) Եւ Յէու ըսաւ․ Թէ
որ կը հաճիք, փախստական մը աս
քաղաքէս դուրս չելլէ, որ երթայ
ասիկա Յեզրայէլի մէջ պատմէ ։
16 Եւ Յէու հեծաւ, ու Յեզրայէլ
գնաց․ քանզի Յովրամը հոն պառկած
էր․ և յ Յուդայի Ոքոզիա թագաւորը՝
Յովրամը տեսնելու իջեր
17 էր ։ Ու Յեզրայէլի մէջ աշտարակին
վրայ դէտ մը կայներ էր, որ
Յէուի գունդին գալը տեսնելով,
ըսաւ․ Ես մէկ գունդ մը կը տեսնեմ․
և Յովրամ ըսաւ․ Մէկ ձիաւոր
մը առ, ու անոնց դիմացը խրկէ,
ու թող ըսէ․ Խաղաղութի՞ւն
18 է ։ Եւ ձիաւորը զանիկայ դիմաւորելու
գնաց․ ու ըսաւ․ Թագաւորը
այսպէս կ'ըսէ․ Խաղաղութի՞ւն
է․ ու Յէու ըսաւ․ Դուն
խաղաղութիւնը ի՞նչ պիտի ընես․
ետիս անցիր ։ Եւ դէտը պատմեց
ու ըսաւ․ Պատգամաւորը մինչև
անոնց քովը գնաց․ բայց չդարձաւ ։
19 Ու մէկ ուրիշ ձիաւոր մը խրկեց․
անիկայ ալ անոնց գնաց, ու ըսաւ․
Թագաւորը այսպէս կ'ըսէ․ Խաղաղութի՞ւն
է ։ Եւ Յէու ըսաւ․
Դուն խաղաղութիւնը ի՞նչ պիտի
20 ընես․ ետիս անցիր ։ Ու դէտը
պատմեց ու ըսաւ․ Մինչև անոնց
քովը գնաց, բայց չդարձաւ․ և աս
ընթացքը Նամեսսեան Յէուին ընթացքին
կը նմանի․ քանզի կատաղաբար
կը քշէ ։
21 Ան ատենը Յովրամ ըսաւ․ Կառքը
պատրաստէ՛․ ու անոր կառքը
պատրաստեցին, և Իսրայէլի թագաւորը
Յովրամ, ու Յուդայի
թագաւորը Ոքոզիա՝ ամէն մէկը իր
կառքովը Յէուն դիմաւորելու ելան,
ու զանիկայ Յեզրայելացի
Նաբովթին արտաքին մէջը գտան ։
22 Եւ Յովրամ՝ Յէուն տեսնելուն պէս՝

կ Մատ․ ԻԱ․ 7 ։
հ Գլ․ Ը․ 29 ։
յ Գլ․ Ը․ 29 ։
ն Բ Մն․ ԻԲ․ 7 ։

Ն. Ք. ԳՔ. 884

ըսաւ. Ո՞վ Յէու՝ խաղաղութի՞ւն
է. ու անիկայ ըսաւ. Ի՞նչպէս խա-
ղաղութիւն կ'ըլլայ, քանի որ քու
մօրդ Յեզաբէլին պոռնկութիւն-
ները ու կախարդութիւնները կը
23 շատնան ։ Եւ Յովրամ ձեռքերը
դարձուց՝ ու փախաւ, ու Ոքոզիա-
յին ըսաւ. Ո՛վ Ոքոզիա՝ դաւա-
24 ճանութիւն կայ ։ Եւ Յէու *իր
աղեղը ուժով քաշեց", ու Յովրա-
մը ուսերուն մէջտեղէն զարկաւ, ու
նետը անոր սրտէն ելաւ, և անիկայ
25 իր կառքին մէջը կծկեցաւ ։ Ու
Յէու իր զօրագլուխին Բադեկարին
ըսաւ. Ասիկայ վերցուր, Յեզրա-
յելացի Նաբովթին կալուածքի
ագարակին մէջը նետէ, քանզի
միտքդ բեր որ երբոր ես ու դուն
անոր հօրը Աքաաբին ետևէն յիշեա-
լով հեծած՝ քովէքով կ'երթայինք,
*Տէրը անոր դէմ աս վճիռը տուաւ
26 Տէրը կ'ըսէ որ՝ Իրաւցընէ երէկ Նա-
բովթին արիւնը ու անոր որդւոցը
արիւնը տեսայ, ու *քեզի աս ագա-
րակին մէջը պիտի հատուցանեմ
կ'ըսէ Տէրը ։ Անոր համար հիմա
վերցուր զանիկայ աս ագարակին
մէջը նետէ Տէրոջը ըսածին հա-
մեմատ ։

*Եբր. աղեղով իր ձեռքը լեցուց.

Գ Թագ. ԻԱ. 29.

Գ Թագ. ԻԱ. 19.

27 Եւ Յուդայի Ոքոզիա թագաւո-
րը աս բանը տեսնելով՝ պարտէզի
տանը ճամբայէն փախաւ. ու Յէու
անոր ետևէն իյնալով ըսաւ. Ա-
սիկայ ալ կառքին վրայ զարկէք.
ու զանի Յեբղաամի քովը եղող
Գուր բլուրին վրայ, ու [illegible]
*Մակեդդով փախաւ, ու հոն մե-
28 ռաւ. Եւ անոր ծառաները զանի-
կայ կառքով Երուսաղէմ տարին,
ու զանիկայ Դաւիթի քաղաքը իր
գերեզմանին մէջ՝ իր հայրերուն հետ
թաղեցին ։
29 Եւ Ոքոզիա՝ Աքաաբի որդւոյն
Յովրամին մետասաներորդ տարին՝
Յուդայի վրայ թագաւոր եղեր
էր ։
30 Եւ Յէու՝ Յեզրայել եկաւ. ու
երբոր Յեզաբէլ լսեց, *իր աչքե-
րուն ծարոյր դրաւ, և իր գլուխը
զարդարեց, ու պատուհանէն կը
31 նայէր ։ Ու երբոր Յէու դռնէն
ներս կը մտնէր, անիկայ ըսաւ
*Միթէ իր տէրը մեռցընող Զամբ-
32 րին յաջողութիւն կա՞յ ։ Եւ
Յէու իր երեսը դէպ 'ի պատուհա-
նը վերցուց, ու ըսաւ. Ինծի հետ
ո՞վ կայ, ո՞վ. ու երկու իրեք ներ-
33 քինիներ անոր նայեցան ։ Ան ա-
տենը ըսաւ. Զանիկայ վա՛ր նետե-
ցէք. ու զանիկայ վար նետեցին.
և անոր արիւնէն պատին ու ձիերուն
վրայ ցաթկեց. ու կոխկըռտեց զա-
34 նիկայ ։ Եւ ինքը ներս մտաւ ու

*Բ Մն. ԻԲ. 9.

Իբր 886
Աս ժամանակը սկսեց թագաւորել իբրև փոխանորդ իր հօրը անոր հիւանդութեանը ատենը Բ Մն. ԻԱ. 18, 19. Իսկ Յովրամին 12 երորդ տարին սկսեց մինակ թագաւորել. Գլ. Ը. 25.

Իբր 884

*Եզեկ. ԻԳ. 40.

*Գ Թագ. ԺԶ. 9—20.

Ն. Ք. ԳՔ. Իբր 884

կերաւ խմեց, ու ըսաւ. Հիմա աս ա-
նիծած կնկանը հոգ տարէք, ու զա-
նիկայ թաղեցէ՛ք. քանզի *թագա-
35 ւորի աղջիկ է ։ Եւ զանիկայ թա-
ղելու գացին. բայց անոր գագա-
թէն՝ ու ոտքերէն՝ ու ձեռքերուն
թաթերէն 'ի զատ՝ ուրիշ բան մը
36 չգտան ։ Եւ դարձան անոր պատ-
մեցին. ու անիկայ ըսաւ. Աս է
Տէրոջը խօսքը՝ որ իր ծառային
Թեզբացի Եղիային ձեռքովը խօ-
սեցաւ՝ ըսելով. *Յեզաբէլին մար-
մինը Յեզրայելի ագարակին մէջ
37 շուները պիտի ուտեն. Ու Յեզա-
բէլին դիակը՝ Յեզրայելի ագարա-
կին մէջ՝ *արտի երեսի վրայ եղող
աղբի պէս պիտի ըլլայ, այնպէս որ
չըսուի թէ՝ Ասիկայ Յեզաբէլն է ։

*Գ Թագ. ԺԶ. 31.

*Գ Թագ. ԻԱ. 23.

*Սաղ. ՁԳ. 10.

## ԳԼ. Ժ.

1 Յէու նամակներ խրկելով՝ Աքաաբին եօթա-
նասուն որդիները գլխատել կու տայ. 8 ու
աս ըրած բանը կ'արդարացընէ՝ Եղիային մար-
գարէութիւնը յիշելով. 12 հովիւներու Բե-
թակադին քովը՝ Ոքոզիային քառասուներ-
կու եղբայրները կը մեռցընէ ։ 15 Յէու իրեն
ընկեր կ'առնէ Յովնադաբը, 18 ու խորաման-
կութիւնով՝ Բահաղին երկրպագութիւն ընող-
ներուն ամէնն ալ բնաջինջ կ'ընէ ։ 29 Յէու
Յերոբովամին ըրած մեղքերուն կը հետևի ։
32 Ազայէլ՝ Իսրայէլը կը նեղէ ։ 34 Յովա-
քազ՝ Յէուին տեղը կը յաջորդէ ։

1 Եւ Աքաաբ Սամարիայի մէջ եօ- 884
թանասուն որդի ունէր. ու
Յէու նամակ մը գրեց, և Սամա-
րիա խրկեց Յեզրայելի իշխաննե-
րուն, ու ծերերուն, և Աքաաբին
որդւոցը հոգաբարձուներուն՝ ու
2 ըսաւ. Երբոր աս նամակս ձեզի
հասնի, ահա ձեր տիրոջը որդիքը
ձեր քովն են. ու կառքեր, ու
ձիեր, և պարսպաւոր քաղաք, ու
3 զէնքեր ալ ունիք. Ուրեմն ձեր
տիրոջը որդիներէն որն որ աղէկ ու
յարմար կը դատէք, զանիկայ իր
հօրը աթոռին վրայ նստեցուցէք,
ու ձեր տիրոջը տանը համար պա-
4 տերազմ ըրէք ։ Ու անոնք խիստ
շատ վախցան, ու ըսին. Ահա եր-
կու թագաւորներ չկրցան անոր
առջևը կայնիլ, ու մենք ի՞նչպէս
5 պիտի կայնինք ։ Եւ պալատին հա-
զարապետը, ու քաղաքապետը,
ու ծերերը, և հոգաբարձուները՝
Յէուին մարդ խրկեցին ու ըսին.
Մենք քու ծառաներդ ենք. ու
մեզի ինչ որ հրամայես, պիտի ը-
նենք. բնաւ մէկը թագաւոր պիտի
չդնենք. քու աչքերուդ աղէկ ե-
րևցածը ըրէ՛ ։
6 Եւ անոնց նորէն նամակ մը գրեց՝
ըսելով. Թէ որ դուք իմ հետս
էք, ու իմ խօսքս մտիկ կ'ընէք,
ձեր տիրոջը որդւոցը գլուխները
առէ՛ք, ու վաղը աս ատենս ինծի

Ն․ Ք․ ԴՔ․
884

Յեզրայէլ եկէք․ ու Թագաւորին
որդիքը եօթանասուն հոգի էին,
ու զանոնք մեծցընող՝ քաղաքի մե-
7 ծերուն քովն էին։ Եւ նամակը
անոնց հասածին պէս՝ թագաւորին
որդիները բռնեցին, ու աեօթանա-
սուն հոգի մորթեցին, և անոնց
գլուխները կողովներու մէջ դրին,
8 ու անոր խրկեցին Յեզրայէլ։ Եւ
լրաբեր մը եկաւ, ու անոր պատ-
մեց՝ ըսելով․ Թագաւորին որդւո-
ցը գլուխները բերին։ Եւ անիկայ
ըսաւ․ Զանոնք մինչև առտու դը-
րանը քովը դրէք երկու դէզ ընելով։
9 Ու առտուանց դուրս ելաւ կայնե-
ցաւ, և բոլոր ժողովուրդին ըսաւ․
դուք արդար էք․ ահա բես իմ
տիրոջս դէմ գլուխ վերցուցի, ու
զանիկայ մեռցուցի․ բայց ասոնք
10 ամէնը ո՞վ մեռցուց։ Հիմա գիտ-
ցէ՛ք որ Տէրոջը խօսքէն գընաւ մէկ
բան մը գետինը պիտի չիյնայ, որն
որ Տէրը Աքաաբին տանը համար
խօսեցաւ․ ու Տէրը դիր ծառային
Եղիային ձեռքովը ըսածը ըրաւ։
11 Եւ Յէու՝ Յեզրայելի մէջ Աքաա-
բին տունէն բոլոր մնացածները, ու
անոր բոլոր մեծ նախարարները, և
մտերիմ բարեկամները, ու քուր-
մերը մեռցուց, այնպէս որ անոր
մնացորդ մը չթողուց։
12 Անկէ ետքը ելաւ Սամարիա գը-
նաց․ ու ճամբուն վրայ հովիւնե-
13 րու *Բեթակադին հասնելով, եՅէ-
ու՝ Յուդայի Օքոզիա թագաւորին
եղբայրները գտաւ, ու անոնց ըսաւ․
Դուք ո՞վ էք։ Եւ անոնք ըսին․
Օքոզիային եղբայրներն ենք, ու
թագաւորին որդիները՝ ու թա-
գուհիին որդիները ողջունելու ի-
14 ջանք։ Ան ատենը անիկայ ըսաւ․
Ասոնք ո՛ղջ բռնեցէք․ ու զանոնք
ողջ բռնեցին, և Բեթակադի ջըր-
հորին քովը մեռցուցին զանոնք,
որ քառասունուերկու հոգի էին․
ու անոնց մէկը ողջ չթողուց։
15 Եւ անկէ գնաց․ ու իր դիմացը
ելլող զՌեքաբի որդին էՅովնադա-
բը գտաւ, ու անոր բարև տուաւ ու
ըսաւ․ Ինչպէս որ իմ սիրտս քու
սրտիդ հետ ուղիղ է, արդեօք քու
սիրտդ ալ այնպէս ուղի՞ղ է․ և
Յովնադաբ ըսաւ․ Այո՛։ Ուրեմն
էձեռքդ տո՛ւր։ Ու անիկայ ձեռ-
քը տուաւ․ ու զանիկայ կառքին
16 մէջ իր քովը առաւ, Եւ ըսաւ․
Ինծի հետ եկուր, ու Տէրոջը հա-
մար ունեցած ընախանձաւորու-
թիւնս տես․ այսպէս անոր կառքը
17 հեծցուցին զանիկայ։ Եւ Սամա-
րիա գնաց, ու Սամարիայի մէջ թԱ-
քաաբէն բոլոր մնացածները զար-
կաւ, մինչև որ զանիկայ բնաջինջ

ա Գ Թագ․ Իա․ 21։
բ Գլ․ Թ․ 14, 24։
գ Ա Թագ․ Դ․ 19։
դ Գ Թագ․ Իա․ 19, 21, 29։
* Կամ՝ ոչխարակտուր ընելու տունը
ե Գլ․ Ը․ 29։ Բ Մն․ ԻԲ․ 8։
զ Ա Մն․ Բ․ 55։ Երեմ․ ԼԵ․ 6, Է։
է Եզր․ Ժ․ 19։
ը Գ Թագ․ ԺԹ․ 10։
թ Գլ․ Թ․ 8։ Բ Մն․ ԻԲ․ 8։

ըրաւ, ան խօսքին համեմատ որ
ժՏէրը Եղիային խօսեր էր։
18 Եւ Յէու բոլոր ժողովուրդը ժող-
վեց, ու անոնց ըսաւ․ իԱքաաբը
Բահաղին քիչ ծառայութիւն ը-
րաւ․ Յէու անոր շատ ծառայու-
19 թիւն պիտի ընէ։ Եւ հիմա լԲա-
հաղին բոլոր մարգարէները, բոլոր
ծառաները, ու բոլոր քուրմերը
ինծի կանչեցէք, ոչ մարդ մը պա-
կաս չըլլայ․ քանզի Բահաղին մեծ
զոհ †պիտի ընեմ․ ամէն հոն
չգտնուողը պիտի չապրի․ ասիկայ
Յէու խաբէութեամբ ըրաւ, որ
Բահաղին ծառայութիւն ընողները
20 բնաջինջ ընէ։ Եւ Յէու ըսաւ․
Բահաղին համար տօնախմբութիւն
մը ‡սահմանեցէք․ ու ծանուցում
21 ըրին։ Եւ Յէու բոլոր Իսրայէլին
պատգամաւորներ խրկեց, ու Բահա-
ղին բոլոր ծառայութիւն ընողները
եկան, ու չեկող մարդ չմնաց․ և
խԲահաղին տունը եկան․ ու Բա-
հաղին տունը ծայրէ 'ի ծայր լե-
22 ցուեցաւ։ Եւ հանդերձապետին
ըսաւ․ Բահաղին բոլոր ծառայու-
թիւն ընողներուն պատմուճաններ
հանէ․ ու պատմուճանները հա-
23 նեց անոնց։ Եւ Յէու Ռեքաբի
որդւոյն Յովնադաբին հետ՝ Բա-
հաղին տունը մտաւ, ու Բահաղին
ծառայութիւն ընողներուն ըսաւ․
փնտռեցէք նայեցէք, չըլլայ որ հոս
ձեզի հետ Եհովային ծառաներէն
մէկը գտնուի, բայց միայն Բահա-
24 ղին ծառայութիւն ընողները։ Եւ
զոհեր ու ողջակէզներ ընելու մտան․
ու Յէու իրեն համար դուրսը ութ-
սուն մարդ կայնեցուց, ու անոնց ը-
սաւ․ Ո՛վ որ ձեր ձեռքը տուած
մարդիկներէս մէկը ազատէ, ծիր ան-
ձը անոր անձին տեղը պիտի ըլլայ։
25 Ու երբոր ողջակէզը ըրաւ լմընցուց,
Յէու սուրհանդակներուն ու զօրա-
պետներուն ըսաւ․ Գացէ՛ք, ասոնք
մեռցուցէ՛ք․ մարդ մը դուրս չելլէ։
Ու զանոնք սուրէ անցուցին․ և
սուրհանդակները ու զօրապետները
զանոնք նետեցին․ ու ետքը Բահա-
26 ղին տանը քաղաքը մտան․ Եւ
Բահաղին տանը կարձանները հա-
նեցին, ու զանոնք կրակով այրե-
27 ցին։ Եւ Բահաղին արձանը կոր-
ծանեցին, ու Բահաղին տունը
փլցուցին, հու զանիկայ արտաքնոց
28 ըրին մինչև աս օրս։ Այսպէս
Յէու՝ Իսրայէլէն բնաջինջ ըրաւ
29 Բահաղը։ Սակայն Յէու՝ Իսրայէ-
լին մեղանչել տուող Նաբատեան
Յերոբովամին մեղքերէն՝ ձայսինքն
Բեթէլի ու Դանի մէջ եղող ոսկի
որթերէն ետ չկեցաւ։
30 Եւ Տէրը Յէուին ըսաւ․ Որով-

Ն․ Ք․ ԴՔ․
884
ժ Գ Թագ․ Իա․ 21։
ի Գ Թագ․ ԺԶ․ 31, 32։
լ Գ Թագ․ ԻԲ․ 6։
† Եբր․ ունիմ․
‡ Եբր․ սրբեցէք․
խ Գ Թագ․ ԺԶ․ 32։
ծ Գ Թագ․ Ի․ 39։
կ Գ Թագ․ ԺԴ․ 23։
հ Եզր․ Զ․ 11։ Դան․ Բ․ 5։ Գ․ 29։
ձ Գ Թագ․ ԺԲ․ 28, 29։

Ն. Ք. Դ. 884

հետեւ դուն իմ աչքերուս առջեւը
ուղիղ եղածը 'ի գործ դնելով՝ ա-
ղէկ ըրիր , ու Աքաաբին տանը՝
բոլոր իմ սրտիս մէջը եղածին հա-
մեմատ ըրիր , [ա]քու որդիքդ մինչեւ
չորրորդ ազգը՝ Իսրայէլի աթոռին
31 վրայ պիտի նստին ։ Բայց Յէու
Իսրայէլի Տէր Աստուծոյն օրէնքին
մէջը՝ բոլոր սրտով քալելու զգու-
շութիւն չըրաւ , ու [բ]Իսրայէլին
մեղանչել տուող Յերոբովամին մեղ-
քերէն ետ չկեցաւ ։
32 Ան օրերը Տէրը սկսաւ Իսրայէլը
*կոտրել . եւ [գ]Ազայէլ Իսրայելա-
ցւոց բոլոր սահմաններուն մէջը
33 զանոնք զարկաւ , Յորդանանէն
դէպ 'ի արեւելք բոլոր Գաղաադու
երկիրը , այսինքն Գադեանները ,
Ռուբէնեանները , ու Մանասեան-
ները , Առնոն ձորին վրայ եղող
Արոերէն մինչեւ [դ]Գաղաադը ու
Բասանը ։
34 Եւ Յէուին մնացորդ պատմու-
թիւնը , ու ամէն ըրածը , ու բո-
լոր զօրութիւնը՝ ահա Իսրայէլի
թագաւորներուն յիշատակաց գրը-
35 քին մէջը գրուած է ։ Եւ Յէու
իր հայրերուն հետ քնացաւ . ու
զանիկայ Սամարիայի մէջ թաղե-
ցին . եւ անոր որդին Յովաքազ
36 անոր տեղը թագաւոր եղաւ ։ Ու
Յէուին Իսրայէլի վրայ Սամարիայի
մէջ թագաւորութիւն ըրած օրե-
րը՝ քսանըութը տարի էր ։

ա Տես Հմր 35 : Գլ. ժգ. 1. 10 : ժդ. 23 : ժե. 8, 12 :
բ Գ. Թագ. ժդ. 16 :
Իրր 860
* Եբր. ծայրատել .
գ Գլ. Ը. 12 :
դ Ամով. ա. 3 :

## ԳԼ. ԺԱ

1 Գոթողիա՝ բոլոր թագաւորի որդիքը ջարդած ատենը , Յովաս իր Յոսաբէէ հօրաքրոջը ձեռքովը կ'ազատուի , ու վեց տարի Աստուծոյ տանը մէջ կը պահուի ։ 4 Յովիադա՝ հարիւրապետներուն պատուէրներ տալով , եօթներորդ տարին թագաւոր կ'օծէ Յովասը ։ 13 Գոթողիա կը սպաննուի ։ 17 Յովիադա՝ Աստուծոյ երկրպագութիւն ընելը նորէն կը հաստատէ ։

884

1 Եւ [ա]Ոքոզիային մայրը [բ]Գոթո-
ղիա՝ իր որդւոյն մեռնիլը տեսնե-
լով , ելաւ բոլոր [գ]թագաւորական
2 սերունդը բնաջինջ ըրաւ ։ Բայց
Յովրամ թագաւորին աղջիկը՝ Ոքո-
զիային քոյրը՝ Յոսաբէէ՝ Ոքոզիա-
յին որդին Յովասը առաւ , ու
թագաւորին սպաննուած որդւոցը
մէջէն գողցաւ զանիկայ՝ ու անոր
դայեակը . եւ Գոթողիային երեսէն
անկողիններու սենեակին մէջը պա-
հեցին զանիկայ , ու չմեռցուեցաւ ։
3 Եւ անիկայ անոր հետ վեց տա-
րի Տէրոջը տանը մէջ պահուե-
ցաւ . ու երկրին վրայ Գոթողիա
թագաւորութիւն կ'ընէր ։
4 Ու [դ]եօթներորդ տարին՝ Յովիա-
դան ղրկեց , եւ հարիւրապետ-
ները՝ թիկնապահները ու սուրհան-

ա Գլ. Ը. 26 :
բ Բ Մն. իբ. 10 :
գ Բ Մն. իբ. 11 :
878
դ Բ Մն. իգ. 1, եւ :

դակները կանչեց , եւ զանոնք իր
քովը Տէրոջը տունը բերաւ , ու ա-
նոնց հետ ուխտ ըրաւ , ու Տէրոջը
տանը մէջ անոնց երդում ընել
տուաւ , ու թագաւորին որդին ա-
5 նոնց ցուցուց ։ Եւ անոնց պա-
տուիրելով՝ ըսաւ . Ձեր ընելու
բանը աս է . ձեր երրորդ մասը՝ որ
[ե]շաբաթ օրը պիտի մտնեն , թա-
գաւորին տանը պահպանութիւն
6 ընեն . Ու երրորդ մասը՝ Սուրի
դուռը , ու երրորդ մասն ալ՝ սուր-
հանդակաց ետեւի դուռը կայնին . եւ
այսպէս տանը պահպանութիւնը ը-
7 նէք որ մարդ մը չմտնէ ։ Ու ձեզմէ
երկու գունդը՝ այսինքն ամէնը
որ շաբաթ օրը պիտի ելլեն , թա-
գաւորին բոլորտիքը՝ Տէրոջը տա-
8 նը պահպանութիւն ընեն ։ Եւ ա-
մէն մարդ իր զէնքերը ձեռքը՝ թա-
գաւորին չորս կողմը առնէք . ու
կարգերէն ներս մտնողը սպաննուի .
ու թագաւորին հետը ըլլաք , անոր
ելած ու մտած ատենը ։
9 Եւ [զ]հարիւրապետները՝ Յովիա-
դա քահանային բոլոր պատուի-
րածները ըրին . ու ամէն մէկը իր
մարդիկները առաւ , թէ շաբաթ
օրը մտնողները , եւ թէ շաբաթ օրը
ելլողները , ու Յովիադա քահանա-
10 յին քովը եկան ։ Եւ քահանան՝
Տէրոջը տունը եղած Դաւիթ թա-
գաւորին նիզակները ու վահանները
11 հարիւրապետներուն տուաւ ։ Ու
սուրհանդակները ամէն մարդ իր
զէնքը ձեռքը՝ տանը աջ կողմէն
մինչեւ ձախ կողմը՝ սեղանին ու տա-
նը քովը՝ թագաւորին բոլորտիքը
12 կայնեցան ։ Եւ թագաւորին որ-
դին հանեց , ու անոր վրայ թագը
ու վկայութիւնը դրաւ . եւ զանիկայ
թագաւոր ըրին , ու օծեցին , ու
ծափ զարնելով՝ ըսին . [է]Կեցցէ ար-
քայ ։
13 [ը]Եւ Գոթողիա՝ երբոր †վազող
ժողովուրդին ձայնը լսեց , Տէրոջը
14 տունը ժողովուրդին եկաւ . Ու
տեսաւ որ ահա թագաւորը ըստ
սովորութեան [թ]սիւնին քովը կայ-
ներ էր . եւ զօրապետները ու փողերը
թագաւորին քովն էին , ու երկրին
բոլոր ժողովուրդը ուրախանալով՝
փողեր կը հնչեցընէին . ան ատենը
Գոթողիա իր հանդերձները պատ-
ռեց , ու պոռաց . Դաւաճանու-
15 թի՛ւն է , դաւաճանութի՛ւն ։ Եւ
Յովիադա քահանան՝ զօրքերուն
վրայ եղող հարիւրապետներուն
հրամայեց , ու անոնց ըսաւ . Անի-
կայ կարգերուն մէջէն հանեցէք . ու
ասոր ետեւէն գացողը սրով մեռցու-
ցէք . (քանզի քահանան ըսեր էր
որ Տէրոջը տանը մէջ չմեռցուի . )

Ն. Ք. Դ. 878
ե Ա Մն. Թ. 25 :
զ Բ Մն. իգ. 8 :
է Ա Թագ. Ժ. 24 :
ը Բ Մն. իգ. 12, եւ :
† Կամ՝ սուրհանդակներուն ու
թ Գլ. իգ. 3 : Բ Մն. Լդ. 31 :

Ն. Ք. ԶՔ. 878

16 Եւ անոր վրայ ձեռքերնին երկըն-
ցուցին. ու երբոր անիկայ թագա-
ւորական տունը մտնող ձիերուն
ճամբայէն կ'երթար, հոն մեռ-
ցուեցաւ։

ԺԲ Մն. ԻԳ. 16։

17 Եւ Յովիադա՝ Տէրոջը, ու թա-
գաւորին ու ժողովուրդին միջտեղը
ուխտ ըրաւ, որ Տէրոջը ժողովուր-
դը ըլլան. Նաև թագաւորին ու

Է Թագ. Ե. 3։
Լ Գլ. Ժ. 26։

18 ժողովուրդին միջտեղը։ Ու երկ-
րին բոլոր ժողովուրդը Բահաղին
տունը մտան, և զանիկայ կործա-
նեցին, և անոր սեղանները ու կուռ-
քերը կտոր կտոր ըրին, և Բահաղին
քուրմը Մատթանը՝ սեղաններուն
առջևը սպաննեցին. ու քահանան
Տէրոջը տանը մէջ պաշտօնեաներ

Ի Օր. ԺԲ. 3։ Բ Մն. ԻԳ. 17։
Բ Մն. ԻԳ. 18, 𐓏։

19 դրաւ։ Եւ հարիւրապետները,
թիկնապահները, ու սուրհանդակ-
ները, ու երկրին բոլոր ժողովուրդը
առաւ. և թագաւորը Տէրոջը տու-
նէն իջեցուցին, ու սուրհանդակաց
դրանը ճամբայէն թագաւորին
տունը մտան. և անիկայ թագա-
ւորներուն աթոռին վրայ նստաւ։
20 Ու երկրին բոլոր ժողովուրդը ուրա-
խացաւ, ու քաղաքը հանդարտու-
թեան մէջ էր. իսկ Գոթողիան՝
թագաւորական տանը քովը սրով
21 մեռցուցին։ Յովաս եօթը տարե-
կան էր, երբոր թագաւոր եղաւ։

Բ Մն. ԻԴ. 1։

## ԳԼ. ԺԲ

1 Յովաս աղէկ կերպով կը կառավարէ ժողովուր-
դը՝ Յովիադային բոլոր օրերուն մէջ. 4 տա-
ճարը նորոգելու հրաման կ'ընէ։ 17 Ազայէլ՝
Երուսաղէմի վրայ երթալէն կը դառնայ, սուրբ
գանձերը իրեն ընծայ տրուելուն համար։ 19
Յովասին ծառաները զինքը կը սպաննեն, ու
Ամասիան անոր տեղը կը յաջորդէ։

Բ Մն. ԻԴ. 1։

1 Յէուին եօթներորդ տարին՝ Յո-
վաս թագաւոր եղաւ, ու Երու-
սաղէմի մէջ քառասուն տարի թա-
գաւորութիւն ըրաւ. ու անոր մօրը
անունը Սաբիա էր, Բերսաբէէ քա-
2 ղաքէն։ Եւ Յովաս Տէրոջը առջևը
ուղղութիւն ըրաւ ան բոլոր օրե-
րուն մէջ՝ որ Յովիադա քահանան

Գ Թագ. ԺԵ. 14։ Իբ. 44։ Գլ. ԺԴ. 4։

3 անոր կը սորվեցընէր։ Բայց բարձր
տեղուանքը չվերցան. ժողովուրդը
տակաւին բարձր տեղերու վրայ զոհ
կը մատուցանէին, ու խունկ կը
ծխէին։
4 Եւ Յովաս քահանաներուն ըսաւ.
Տէրոջը տունը բերուած սուրբ
բաներուն բոլոր ստակը, համ-
րուած մարդոց ստակը, գինը կըտ-
րուած անձինքներուն ստակը, և
ան բոլոր ստակը՝ որ մարդ մը Տէ-
րոջը տունը բերելու կամք կ'ընէ,
5 Քահանաները՝ ամէն մարդ իրենց
ճանչուորներէն առնեն, ու տանը
փլած տեղուանքը իրենք նորոգեն,
ուր որ փլած տեղ մը գտնուի.

Գ Գլ. ԻԲ. 4։ Ե Ել. Լ. 13։ Ե Ղև. ԻԷ. 2։ Ղ Ել. ԼԵ. 5։ Ա Մն. ԻԹ. 9։

6 Սակայն Յովաս թագաւորին
քսանուերեքերորդ տարին քահա-
նաները տանը փլած տեղուանքը
7 չնորոգեցին։ Եւ Յովաս թա-
գաւորը Յովիադա քա-
հանան, ու միւս քահանաները, և
անոնց ըսաւ. Տանը փլած տե-
ղուանքը ինչո՞ւ չէք նորոգեր. ու
հիմա ձեր ճանչուորներէն միայն ալ
ստակ մի՛ առնէք, հապա զանիկայ
տանը փլած տեղերուն համար
8 տուէք։ Եւ քահանաները հաւա-
նութիւն տուին, որ իրենք ստակ
չառնեն ժողովուրդէն, *ոչ ալ
տանը փլած տեղուանքը նորոգեն՝՝։
9 Եւ Յովիադա քահանան մէկ սըն-
տուկ մը առաւ, ու անոր վրան
ծակ մը ծակեց, ու զանիկայ սեղա-
նին քովը՝ Տէրոջը տունը մտնող-
ներուն աջ կողմը դրաւ. և դու-
ռը պահող քահանաները Տէրոջը
տունը բերուած բոլոր ստակը հոն
10 կը դնէին։ Ու երբոր կը տեսնէին
որ սնտուկին մէջ ստակը շատցեր
է, թագաւորին գրագիրը ու մեծ
քահանան կ'ելլէին, ու Տէրոջը
տունը գտնուած ստակը համրելով՝
11 կը ծրարէին. Եւ պատրաստուած
ստակը՝ Տէրոջը տանը գործին վրայ
դրուած բանուորներուն ձեռքը կու
տային, որ անոնք Տէրոջը տանը
մէջ գործող հիւսներուն, ու շինող-
12 ներուն, Եւ որմնադիրներուն, ու
քարահատներուն վճարեն. Նաև
Տէրոջը տանը փլած տեղուանքը նո-
րոգելու համար՝ փայտեր ու տա-
շուած քարեր ծախու առնեն, և
տանը նորոգութեանը համար բոլոր
պէտք եղած բաներուն ծախք ընեն։
13 Բայց Տէրոջը տունը բերուած
ստակէն՝ Տէրոջը տանը համար
արծաթէ գաւաթներ, բազմակալ-
ներ, կոնքեր, փողեր, ու ոսկիէ
ամաններ, կամ արծաթէ ամաններ
14 ամենևին չշինուեցաւ. Քանզի բան-
ւորներուն կու տային զանիկայ,
որ անով Տէրոջը տունը նորոգեն։
15 Եւ որոնց ձեռքը որ կը յանձնէին
ան ստակը՝ բանուորներուն տալու
համար, անոնցմէ հաշիւ չէին առ-
ներ. քանզի անոնք հաւատարմու-
16 թեամբ կ'աշխատէին։ Յանցանքի
ստակը ու մեղքի ստակը՝ Տէրոջը
տունը չէր մտներ. անիկայ քա-
հանաներուն կ'ըլլար։
17 Ան ատենը Ասորւոց Ազայէլ թա-
գաւորը ելաւ՝ Գեթի դէմ պատե-
րազմ ըրաւ. ու զանիկայ առաւ.
ետքը Ազայէլ իր երեսը դարձուց,
18 որ Երուսաղէմի վրայ ելլէ։ Եւ
Յուդայի թագաւորը Յովաս՝ իր
հայրերուն Յուդայի թագաւորնե-
րուն՝ Յովսափատին ու Յովրա-

Ն. Ք. ԶՔ. 856
Ի Բ Մն. ԻԴ. 5։
Ը Բ Մն. ԻԴ. 6։
* Կամ՝ առ անոնց նորոգելու տանը փլած տեղուանքը։
Ի Բ Մն. ԻԴ. 8, 𐓏։
Ժ Տեր Բ Մն. ԻԴ. 14։
Է Գլ. ԻԲ. 7։
Լ Ղև. Ե. 15, 18։
Ի Ղև. Է. 7։ Թու. ԺԸ. 9։
Իբր 840
Ծ Գլ. Ը. 12։
Տեր Բ Մն. ԻԴ. 23։

Ն. Ք. ԴԲ.
Իրր 840

Հգ Թագ. ԺԵ. 19։ Գլ. ԺԶ. 15, 16։

մին, և Ոքոզիային հնուիրած բոլոր
սուրբ բաները, ու իր նուիրածը,
և Տէրոջը տանը ու թագաւորական
տանը գանձերուն մէջը գտնուած
բոլոր ոսկին առաւ, ու Ասորւոց
Ազայէլ թագաւորին խրկեց. այս-
պէս անիկայ Երուսաղէմի վրայէն
*ետ քաշուեցաւ"։

* Եբր. ելաւ։

19 Եւ Յովասին մնացորդ պատմու-
թիւնը, ու անոր բոլոր ըրածը՝ ա-
հա Յուդայի թագաւորներուն յի-
շատակաց գրքին մէջը գրուած է։
20 Եւ յանոր ծառաները ոտք ելան,
ու անոր դէմ դաւաճանութիւն ը-
րին. ու Յովասը զարկին Մելօնի
տանը մէջ, որ Սիլլայի զառ՚ի վայ-
21 րին վրայ է։ Եւ անոր ծառաները՝
Սամեթի որդին ՂՅովզաքար, ու
Սովմերի որդին Յովզաբադ՝ զանի-
կայ զարկին. ու մեռաւ. և զանի-
կայ իր հայրերուն հետ՝ Դաւիթի
քաղաքին մէջը թաղեցին. ու անոր
տեղը անոր որդին ՃԱմասիան թա-
գաւոր եղաւ։

յ Գլ. ԺԴ. 5։ բ Մն. ԻԴ. 25։
839
Ղ բ Մն. ԻԴ. 26 Կ՚ըսուի Զաբադ։
Ճ բ Մն. ԻԴ. 27։

ԳԼ. ԺԳ

1 Յովաքազին չար վարմունքը։ 3 Յովաքազ՝ Ազայելէն նեղութիւն կը կրէ, բայց աղօթքով կը զօրանայ։ 9 Յովաս անոր տեղը կը յաջորդէ։ 10 Յովասին չար վարմունքը։ 13 Երկրորդ Յերոբովամը անոր տեղը կը յաջորդէ։ 14 Եղիսէ իր մեռնելու ատենը՝ Ասորւոց դէմ Յովասին ընելու երեք յաղթութիւններուն վրայ կը մարգարէանայ։ 20 Մովաբացւոց Իսրայէլի երկրին վրայ ասպատակութիւն ընելու եկած ատենը՝ մեռած մարդ մը Եղիսէին ոսկորներուն դպչելով՝ կ'ողջննայ։ 22 Ազայելին մեռնելէն ետքը՝ Յովաս Բենադադին վրայ երեք յաղթութիւնները կը կատարէ։

856

1 Յուդայի թագաւորին՝ Ոքոզիայի
որդւոյն Յովասին քսանուիրեք-
երորդ տարին՝ Իսրայէլի վրայ
Յէուի որդին Յովաքազը թագաւոր
եղաւ Սամարիայի մէջ, ու տասն-
2 ուեօթը տարի թագաւորեց։ Եւ
Տէրոջը առջևը չարութիւն ըրաւ,
ու Իսրայէլին մեղանչել տուող Նա-
բատեան Յերոբովամին մեղքերուն
հետևող եղաւ. անոնցմէ ետ չկե-
3 ցաւ։ Եւ ՔՏէրոջը բարկութիւնը
Իսրայէլի վրայ բորբոքեցաւ, ու
զանոնք՝ շարունակ ՔԱսորւոց Ազա-
յէլ թագաւորին ձեռքը, ու Ազա-
յէլի որդւոյն Բենադադին ձեռքը
մատնեց։

Իրր 849
Դատ. Բ. 14։
Ք Գլ. Ը. 12։

4 Եւ Յովաքազ ՉՏէրոջը աղօթք
ըրաւ. ու Տէրը անոր մտիկ ըրաւ.
Ցքանզի տեսաւ Իսրայէլի նեղու-
թիւնը, որով Ասորւոց թագաւո-
5 րը զանոնք նեղեց։ ՐԵւ Տէրը Իս-
րայէլին մէկ փրկիչ մը տուաւ, ու
Ասորւոց ձեռքին տակէն ելան. և
Իսրայէլի որդիքը երէկուան ու մէ-
կալ օրուան պէս՝ իրենց վրաննե-
6 րուն մէջը կը նստէին։ Բայց Իս-
րայէլին մեղանչել տուող Յերոբո-
վամին տանը մեղքերէն ետ չկեցան,
հապա անոնց մէջը քալեցին. Ւու
Աստարովթի կուռքն ալ Սամա-
7 րիայի մէջ կը կենար։ Իսկ Յովա-
քազին ուրիշ զօրք չթողուց. բայց
միայն յիսուն ձիաւոր. տասը կառք,
ու տասը հազար հետևակ զօրք.
վասն զի Ասորւոց թագաւորը զա-
նոնք բնաջինջ ըրեր էր. Իու զա-
նոնք կոխուած հողի պէս ըրեր էր։

Իրր 842
Չ Սաղ. ՀԸ. 34։
Ց Ել. Գ. 7։ Գլ. ԺԴ. 26։
Ր Տես՝ Հմր 23։ Գլ. ԺԴ. 25, 27։

Ն. Ք. ԴԲ.
Իրր 842
Ւ Գ Թագ. ԺԶ. 33։
Ի Ամով. Ա. 3։

8 Եւ Յովաքազին մնացորդ պատ-
մութիւնը ու անոր բոլոր ըրածը,
ու զօրութիւնը՝ ահա Իսրայէլի
թագաւորներուն յիշատակաց գըր-
9 քին մէջը գրուած է։ Եւ Յովա-
քազ իր հայրերուն հետ քնացաւ.
ու զանիկայ Սամարիայի մէջ թա-
ղեցին. և անոր տեղը՝ անոր որդին
Յովասը թագաւոր եղաւ։

839

10 Յուդայի Յովաս թագաւորին եր-
սունևեօթներորդ տարին՝ Իսրայէ-
լի վրայ ԸՅովաքազի որդին Յովասը
թագաւոր եղաւ Սամարիայի մէջ.
ու տասնըվեց տարի թագաւորեց։

841
Ը Գլ. ԺԴ. 1։

11 Եւ Տէրոջը առջևը չարութիւն ը-
րաւ, ու Իսրայէլին մեղանչել տու-
ող Նաբատեան Յերոբովամին բոլոր
մեղքերէն ետ չկեցաւ, հապա անոնց
մէջը քալեց։
12 ՐԵւ Յովասին մնացորդ պատմու-
թիւնը, ու Ժանոր բոլոր ըրածը,
և Յուդայի Ամասիա թագաւորին
հետ պատերազմ ըրած ատենը Իիր
քաջութիւնը՝ ահա Իսրայէլի թա-
գաւորներուն յիշատակաց գրքին
13 մէջը գրուած է։ Ու Յովաս իր
հայրերուն հետ քնացաւ. և անոր
աթոռը Յերոբովամը նստաւ. ու
Յովաս Իսրայէլի թագաւորներուն
հետ՝ Սամարիայի մէջ թաղուե-
ցաւ։

Ր Գլ. ԺԴ. 15։
Ժ Տես՝ Հմր 14, 25։
Ի Գլ. ԺԴ. 9, Ճ։ բ Մն. ԻԵ. 17, Ճ։
825

14 Եւ Եղիսէ իր մեռնելու հիւան-
դութիւնովը հիւանդացաւ. և Իս-
րայէլի թագաւորը Յովաս անոր ի-
ջաւ, ու անոր երեսին վրայ լացաւ
ու ըսաւ. Հայր իմ, հայր իմ,
ՆԻսրայէլին կառքը՝ ու անոր ձիա-
15 ւորները։ Ու Եղիսէ անոր ըսաւ.
Մէկ աղեղ մը ու նետեր առ։ Եւ
անիկայ աղեղ մը ու նետեր առաւ։
16 Ու Իսրայէլի թագաւորին ըսաւ.
Ձեռքդ աղեղին վրայ հեծցուր. և
անիկայ ձեռքը հեծցուց. ու Եղիսէ
իր ձեռքերը թագաւորին ձեռքե-
17 րուն վրայ դրաւ, Ու ըսաւ. Արևե-
լեան կողմի պատուհանը բաց. ան
ալ բացաւ. ու Եղիսէ ըսաւ. Նե-
տէ. ան ալ նետեց։ Ան ատենը
Եղիսէ ըսաւ. Տէրոջը փրկութեան
նետը, ու Ասորւոց դէմ փրկու-
թեան նետը. քանզի Ասորիները
ԽԱփեկի մէջ պիտի զարնես՝ մինչև

Իրր 839
Ն Գլ. Բ. 12։
Խ Գ Թագ. Ի. 26։

Ն․ Ք․ ԳՖ․
Իսր 839

18 որ հատցընես ։ Նաև ըսաւ ․ Նետե-
րը առ ․ ու անիկայ առաւ ․ և Իս-
րայէլի թագաւորին ըսաւ ․ Գե-
տինը զարկ ․ ու անիկայ իրեք ան-
գամ-գետինը զարկաւ , ու կեցաւ ։
19 Եւ Աստուծոյ մարդը անոր բարկա-
նալով ըսաւ ․ Թէ որ հինգ կամ վեց
անգամ զարնէիր , ան ատենը Ասո-
րիները պիտի զարնէիր , ու պիտի
ծ Հմր 25 ․
հատցընէիր ․ ծ բայց հիմա Ասորի-
ները միայն իրեք անգամ պիտի զար-
նես ։
Իսր 838
20 Ու Եղիսէ մեռաւ ․ և զանիկայ
թաղեցին ։ Ու հետևեալ տարին՝
Մովաբացւոց գունդերը երկրին վը-
21 րայ եկան ։ Ու երբոր մարդ մը կը
թաղէին , ահա գունդ մը տեսան ,
ու մարդը Եղիսէին գերեզմանը նե-
տեցին ․ և ան մարդը Եղիսէին ոս-
կորներուն դպածին պէս՝ կենդա-
նացաւ , ու իր ոտքերուն վրայ կայ-
նեցաւ ։
Հ Գլ․ Ը․ 12 ․
22 Եւ Հ Ասորւոց Ազայէլ թագաւո-
րը՝ Յովաքազին բոլոր օրերուն մէջ
Հ Գլ․ Ժգ․ 27 ․
23 Իսրայէլը նեղեց ։ Հ Բայց Տէրը
Յ Ել․ Լբ․ 13 ․
Յ Աբրահամին , Իսահակին , ու Յա-
կոբին հետ իր ըրած ուխտին համար
անոնց ողորմեցաւ ու գթութիւն
Ղ Ել․ Բ․ 24 ,
25 ․
ըրաւ , և Ղ անոնց նայեցաւ ․ զա-
նոնք կորսընցընել չուզեց , ու զա-
նոնք դեռ իր երեսէն չձգեց ։
Իսր 839
24 Եւ Ասորւոց Ազայէլ թագաւորը
մեռաւ , ու անոր տեղը՝ անոր որ-
դին Բենադադը թագաւոր եղաւ ։
25 Եւ Յովաքազի որդին Յովասը՝ Ա-
զայէլի որդւոյն՝ Բենադադին ձեռ-
քէն ետ առաւ ան քաղաքները , որ
Ազայէլ անոր հօրը Յովաքազին
ձեռքէն պատերազմով առեր էր ։
Ճ Հմր 18 , 19 ․
Իսր 836
Ճ Յովաս զանիկայ իրեք անգամ
զարկաւ , ու Իսրայէլին քաղաքնե-
րը ետ առաւ ։

## ԳԼ․ ԺԴ

1 Ամասիային բարի վարմունքը ։ 5 Իր հայրը մեռցընողներուն՝ իր ըրած արդար դատաստանը , 7 իր ըրած յաղթութիւնը Եդովմի վրայ ։ 8 Ամասիա՝ Յովասը կը դրգռէ , բայց անկէ կը յաղթուի ու կը կողոպտուի ։ 15 Երկրորդ Յերոբովամը՝ Յովասին տեղը կը յաջորդէ ։ 17 Ամասիա դաւաճանութիւնով մը կը մեռցուի ։ 21 Ազարիան անոր յաջորդը կ՚ըլլայ ։ 23 Յերոբովամին չար վարմունքը ։ 28 Զաքարիա անոր տեղը կը յաջորդէ ։

839
Ա Գլ․ Ժգ․
10 ․
Բ Բ Մն․ Իե․
1 ․
1 Իսրայէլի թագաւորին Ա Յովաքա-
զեան Յովասին երկրորդ տարին՝
Յուդայի թագաւորին Բ Յովասին
որդին Ամասիան թագաւոր եղաւ ։
2 Անիկայ քսանըհինգ տարեկան էր՝
երբոր թագաւոր եղաւ , ու Երու-
սաղէմի մէջ քսանըինը տարի թա-
գաւորութիւն ըրաւ ․ և անոր մօրը
անունը Յովադան էր , Երու-
3 սաղէմացի էր ։ Ու Տէրոջը առջևը
ուղղութիւն ըրաւ , բայց ոչ իր
հօրը Դաւիթին պէս ․ իր հօրը
Յովասին բոլոր ըրածներուն համե-
Ն․ Ք․ ԳՖ․
Իսր 839
4 մատ ըրաւ ։ Գ Սակայն բարձր տե-
Գ Գլ․ Ժբ․ 8 ․
ղուանքը չվերցան ․ ժողովուրդը
տակաւին բարձր տեղերու վրայ
զոհ կը մատուցանէին , ու խունկ
5 կը ծխէին ։ Ու երբոր թագաւորու-
թիւնը անոր ձեռքին մէջ հաստա-
տուեցաւ՝ իր ծառաները մեռցուց ,
Դ որոնք իր հայրը թագաւորը ըս-
Դ Գլ․ Ժբ․
20 ․
6 պաններ էին ։ Բայց սպաննողնե-
րուն որդիքը չմեռցուց , ինչպէս որ
Մովսէսին օրինաց գրքին մէջը գը-
րուած է , որ Տէրը պատուիրեց ը-
սելով ․ Ե Տղոց յանցանքին համար՝
Ե Բ Օր․ Իդ․
16 ․ Եզեկ․
Ժը․ 4 , 20 ․
հայրերը չմեռցուին , ու հայրերուն
յանցանքին համար՝ տղաքը չմեռ-
ցուին ․ հապա ամէն մարդ իր յան-
ցանքին համար պիտի մեռցուի ։
7 Անիկայ Զ Աղի ձորին մէջը Է տասը
Իսր 827
Զ Բ Թագ․ Ը․
13 ․ Սաղ․
Կ․ ին վեր-
նագիրը ․
Է Բ Մն․ Իե․
11 ․
հազար Եդովմայեցի զարկաւ , ու
Վէմը պատերազմով առաւ , Ը և
անոր անունը Յեկթոհէլ կոչեց
մինչև աս օրս ։
8 Թ Ան ատենը Ամասիա՝ Իսրայէլի
Իսր 826
Ը Յես․ ԺԵ․
38 ․
Թ Բ Մն․ Իե․
17 , 18 , ևն ․
թագաւորին՝ Յէուի որդւոյն Յո-
վաքազի որդւոյն Յովասին դես-
պաններ խրկեց՝ ըսելով ։ Եկուր ,
9 երես երեսի տեսնուինք ։ Եւ Իս-
րայէլի Յովաս թագաւորը Յու-
դայի Ամասիա թագաւորին մարդ
խրկեց ու ըսաւ ․ Ժ Լիբանանի փուշը
Ժ Տես Դատ․
Թ․ 8 ․
ԺԱ Լիբանանի եղևնափայտին պատ-
ԺԱ Գ Թագ․ Դ․
33 ․
գամ խրկեց՝ ըսելով ․ Քու աղջիկդ
իմ տղուս կնիկ տուր ․ բայց Լի-
բանանի մէջ եղող դաշտի գա-
զանը անցաւ , ու փուշը կոխկըռ-
10 տեց ։ Իրաւ Եդովմայեցիները զար-
կիր , ու ԺԲ քու սիրտդ քեզ հը-
ԺԲ Բ Օր․ Ը․
14 ․ Բ Մն․
Լբ․ 25 ․ Ե-
զեկ․ Իր․ 2 ,
5 , 17 ․ Ամբ․
Բ․ 4 ․
* Եբր․ փա-
ռաւորուէ ,
պարտացուց ․ *քու փառքովդ գոհ
եղիր ״ , ու տունդ նստէ ․ քանզի
ինչո՞ւ համար չարութեան խառ-
նուիս , որ իյնաս դուն ու քեզի
11 հետ Յուդան ալ ։ Բայց Ամասիա
մտիկ չըրաւ ։ Ուստի Իսրայէլի
Յովաս թագաւորը ելաւ ․ և ինքը
ու Յուդայի Ամասիա թագաւորը
Յուդայի ԺԳ Բեթսամիւսին մէջ երես
ԺԳ Յես․ ԺԹ․
38 , Իա․ 16 ․
12 երեսի տեսնուեցան ։ Եւ Յուդա՝
Իսրայէլին առջևը յաղթուեցաւ ․
ու ամէն մարդ իր վրանը փախաւ ։
13 Եւ Իսրայէլի Յովաս թագաւորը՝
Ոքոզիայի որդւոյն Յովասին որդին
Ամասիան՝ Յուդայի թագաւորը՝
Բեթսամիւսի մէջ բռնեց , ու Ե-
րուսաղէմ եկաւ , ու ԺԴ Եփրեմի
ԺԴ Նեեմ․ Ը․
16 , Ժբ․ 39 ․
ԺԵ Երեմ․ Լա․
38 ․ Զաք․
Ժդ․ 10 ․
դռնէն մինչև ԺԵ Անկեան դուռը՝ Ե-
րուսաղէմի պարսպին չորս հարիւր
14 կանգունը փլցուց ․ Եւ ԺԶ բոլոր ոս-
ԺԶ Գ Թագ․ Է․
51 ․
կին ու արծաթը՝ ու Տէրոջը տանը
մէջ ու թագաւորին տանը գանձե-
Իսր 825
րուն մէջ գտնուած բոլոր ամաննե-

Ն․ Ք․ ԴՔ․
Իrr 825

րը առաւ , և պատանդներ ալ ա֊
ռած , ու Սամարիա դարձաւ ։

ɉ Գւ․ Ժգ․ 12։

15 ɉ Եւ Յովասին գործքերուն մնա֊
ցորդ պատմութիւնը , ու անոր զօ֊
րութիւնը , և Յուդայի Ամասիա
թագաւորին հետ ըրած պատերազ֊
մը՝ աՀա Իսրայէլի թագաւորներուն
յիշատակաց գրքին մէջը գրուած
16 է ։ Ու Յովաս իր Հայրերուն հետ
քնացաւ , և Իսրայէլի թագաւոր֊
ներուն հետ Սամարիայի մէջ թա֊
ղուեցաւ․ ու անոր տեղը՝ անոր որ֊
դին Յերոբովամը թագաւոր եղաւ ։

Ղ Բ Մն․ Իե․ 25, Ա։

17 Եւ Յուդայի թագաւորը՝ ՂՅո֊
վասի որդին Ամասիան , Իսրայէլի
թագաւորին Յովաքազի որդւոյն
Յովասին մեռնելէն ետքը՝ տասնու֊
18 հինգ տարի ապրեցաւ ։ Ու Ամա֊
սիային մնացորդ պատմութիւնը՝
աՀա Յուդայի թագաւորներուն
յիշատակաց գրքին մէջը գրուած

Ճ Բ Մն․ Իե․ 27։

19 է ։ ՃԱնոր դէմ Երուսաղէմի մէջ
դաւաճանութիւն ըրին․ և անիկայ
ՄԼաքիս փախաւ․ բայց անոր ետեւէն
Լաքիսը մարդ իրկեցին , ու զանի֊

Մ Յես․ Ժ․ 31։

810

20 կայ Հոն մեռցուցին ։ Եւ զանիկայ
ձիերով վերցուցին․ ու Երուսաղէմ
իր Հայրերուն հետ՝ Դաւիթի քա֊
21 ղաքին մէջը թաղուեցաւ ։ Եւ բո֊
լոր Յուդայի ժողովուրդը *Ազա֊
րիան առին , որ տասնուվեց տա֊
րեկան էր , ու զանիկայ իր հօրը Ա֊
մասիային տեղը թագաւոր դրին ։

* Կամ՝ Ո֊ զիան․ տես Գւ․ Ժե․ 13, Բ Մն․ Իզ․ 1։

Յ Գւ․ Ժզ․ 6․ Բ Մն․ Իզ․ 2։

22 Ասիկայ ՅԵլաթը շինեց , ու թա֊
գաւորը իր Հայրերուն հետ քնանա֊
լէն ետքը՝ զանիկայ Յուդային ետ
դարձուց ։

825
Հիմա կը սկսի միւնակ թա֊ գաւորել։

23 Յուդայի թագաւորին՝ Յովասի
որդւոյն Ամասիային տասնուհինգ֊
երորդ տարին՝ Իսրայէլի Յովաս
թագաւորին որդին Յերոբովամը
Սամարիայի մէջ թագաւոր եղաւ ,
ու քառասունումէկ տարի թագաւո֊
24 րեց ։ Եւ Տէրոջը առջեւը չարու֊
թիւն ըրաւ , ու Իսրայէլին մեղան֊
չել տուող Նաբատեան Յերոբովա֊
մին բոլոր մեղքերէն ետ չկեցաւ ։

Ն Թու․ Ժգ․ 22։ Լդ․ 8։
Լ Բ Օր․ Գ․ 17։

25 Ասիկայ Իսրայէլին սահմանը ՆԵ֊
մաթի մուտքէն ԼմինչեՒ դաշտի
ծովը ետ դարձուց , Իսրայէլի Տէր
Աստուծոյն խօսքին համեմատ , որ
իր ծառային ՄԳեթքոփերացի Ա֊
մաթեան ԼՅովնան մարգարէին

Մ Յես․ ԺԹ․ 13։
Լ Յովն․ Ա․ 1։ Մատ․ ԺԲ․ 39, 40։

822

26 ձեռքովը խօսեր էր ։ Քանզի Տէ֊
րը ՂտեսաՒ Իսրայէլին խիստ սաս֊
տիկ տառապանքը , որ Հոչ գոցուած
ու ոչ ձգուած կար , ու Իսրայէլը

Ղ Գւ․ Ժգ․ 4։
Լ Բ Օր․ ԼԲ․ 81։
Մ Գւ․ Ժգ․ 5։

27 օգնական ալ չունէր ։ ՄԵւ Տէրը
չըսաւ որ Իսրայէլին անունը երկին֊
քին տակէն բնաջինջ ընէ․ ուստի
Յովասեան Յերոբովամին ձեռքովը
զանոնք ազատեց ։
28 Ու Յերոբովամին մնացորդ պատ֊
մութիւնը , և անոր բոլոր ըրածը ,
ու պատերազմական քաջութիւնը ,
և Դամասկոսը ու †Եմաթը ՄՅու֊
դային ետ դարձնելը Իսրայէլի
մէջ" , աՀա Իսրայէլի թագաւոր֊
ներուն յիշատակաց գրքին մէջը
29 գրուած է ։ Ու Յերոբովամ իր
Հայրերուն՝ Իսրայէլի թագաւորնե֊
րուն հետ քնացաւ․ և անոր տեղը՝
անոր որդին ԼԶաքարիան թագա֊
ւոր եղաւ ։

Ն․ Ք․ ԴՔ․
Իrr 826

† Կամ՝ Յու֊ դայի Եմա֊ թը Իսրայէ֊ լին ետ դար֊ ձընելը ․
Մ Բ Թագ․ Ը․ 6 ։ Գ Թագ․ ԺԱ․ 24 ։ Բ Մն․ Ը․ 3 ։

784

Լ Թագաւո֊ րութեան ա֊ թոռը 11 տա֊ րի պարապ մնալէն վեր֊ ջը․ Գւ․ ԺԵ․ 8։

## ԳԼ․ ԺԵ

1 Ազարիային բարի գործունքը ։ 5 Անիկայ բորոտ կը մեռնի , ու Յովաթամ անոր յաջորդը կ'ըլլայ ։ 8 Զաքարիա՝ Յէուին վերջին սերունդը՝ չար կերպով կը թագաւորէ , ու Սեղղումէն կը մեռցուի ։ 13 Սեղղում ամիս մը թագաւորելէն ետեւ՝ Մանայեմէն կը սպաննուի ։ 16 Մանայեմ Ասորեստանի Փուղ թագաւորին օգնութիւնովը կը զօրանայ ։ 21 Փակէիա անոր տեղը կը յաջորդէ ։ 23 Փակէիա՝ Փակէէէն կը սպաննուի ։ 27 Փակէէ՝ Թագղաթ Փաղասարէն կը նեղուի , ու Ովսէէէն կը սպաննուի ։ 32 Յովաթամին բարի գործունքը ։ 36 Աքազ անոր յաջորդը կ'ըլլայ ։

Իrr 810
Ասիկայ է Յե֊ րոբովամի՝ իր հօրը հետ միկտեղ թա֊ գաւորելուն 27 երորդ տա֊ րին , որ ա֊ նոր հայրը Ասորւոց պատերազմ֊ ներուն գա֊ ցած ատենը զանիկայ ա֊ թոռակից ը֊ րաւ ։ Իսկ ա֊ նոր միապե֊ տութեանը՝ 16 երորդ տա֊ րին է ։

1 Իսրայէլի Յերոբովամ թագաւորին
քսանուեօթներորդ տարին՝ Յու֊
դայի Ամասիա թագաւորին որդին
2 ՄԱզարիան Բ թագաւոր եղաւ ։ Ա֊
նիկայ տասնուվեց տարեկան էր՝
երբոր թագաւոր եղաւ , ու Երու֊
սաղէմի մէջ յիսունուերկու տարի
թագաւորութիւն ըրաւ․ և անոր
մօրը անունը Յեքէլիա էր , ու Ե֊
3 րուսաղէմացի էր ։ Եւ անիկայ Տէ֊
րոջը առջեւը ուղղութիւն ըրաւ , իր
հօրը Ամասիային բոլոր ըրածին
4 պէս ։ Գ Բայց բարձր տեղուանքը
չվերցան․ ժողովուրդը տակաւին
բարձր տեղերու վրայ զոհ կը մա֊
տուցանէին ու խունկ կը ծխէին ։
5 Եւ Տէրը Դ թագաւորը զարկաւ․ ու
մինչեւ իր մահուան օրը բորոտած
էր , և Ե զատ տան մը մէջ կը բնա֊
կէր․ ու պալատին վրայ իշխողը՝
թագաւորին որդին Յովաթամն էր ,
ու անիկայ կը դատէր երկրին ժո֊
ղովուրդը ։

Մ 2 Մր 13, 30, Ա, ու Բ Մն․ Իզ․ 1 Կը֊ ռուի Ոզիա ,
Իrr 765
Բ Գւ․ Ժգ․ 21 ։ Բ Մն․ Իզ․ 1, 3, 4,
Գ 2 Մր 35 , Գւ․ ԺԲ․ 3, Ժդ․ 4։
Դ Բ Մն․ Իզ․ 19—21 ։
Ե Ղե․ Ժգ․ 46 ։

6 Եւ Ազարիային մնացորդ պատ֊
մութիւնը , ու անոր բոլոր ըրածը՝
աՀա Յուդայի թագաւորներուն
յիշատակաց գրքին մէջը գրուած
7 է ։ Ու Ազարիա իր Հայրերուն հետ
քնացաւ․ ու Ղզանիկայ իր Հայրե֊
րուն հետ Դաւիթի քաղաքին մէջը
թաղեցին․ և անոր տեղը՝ անոր որ֊
դին Յովաթամը թագաւոր եղաւ ։

Իrr 758
Ղ Բ Մն․ Իզ․ 23 ։

8 Յուդայի Ազարիա թագաւորին
երսունուութերորդ տարին՝ Իսրա֊
յէլի վրայ՝ Յերոբովամին որդին
Զաքարիան թագաւոր եղաւ Սա֊
մարիայի մէջ , ու վեց ամիս թագա֊
9 ւորեց ։ Եւ անիկայ իր Հայրերուն
ըրածին պէս՝ Տէրոջը առջեւը չա֊

Իrr 773
Աթոռը 11 տարի պա֊ րապ մնա֊ ցած ըլլալով։

Ն. Ք. Ք.
էր 773
էր 772

բութիւն ըրաւ, ու Իսրայէլին մե-
ղանչել տուող Նաբատեան Յերո-
10 բովամին մեղքերէն ետ չկեցաւ ։ Ու
Յաբիսի որդին Սեղղումը անոր
դէմ գլուխ վերցուց, և † զանիկայ
ժողովուրդին առջևը զարկաւ մեռ-
ցուց, ու անոր տեղը ինքը թա-
գաւոր եղաւ ։

† Ամով. Է. 9։

11 Եւ Զաքարիային մնացորդ պատ-
մութիւնը՝ ահա Իսրայէլի թագա-
ւորներուն յիշատակաց գրքին մէջը
12 գրուած է ։ Ասիկայ ‡ Տէրոջը խօսքն
է, որ Յէուին խօսեր էր ըսելով .
Իսրայէլի աթոռին վրայ քու որ-
դիքդ մինչև չորրորդ ազգը պիտի
նստին . ու այնպէս եղաւ ։

‡ Դ Թ. Ժ. 30։

13 Յաբիսի որդին Սեղղումը՝ Յու-
դայի § Ոզիա թագաւորին երսուն-
ութններորդ տարին թագաւոր ե-
ղաւ, ու Սամարիայի մէջ մէկ ամիս
14 թագաւորութիւն ըրաւ ։ Եւ Գադ-
դիի որդին Մանայեմը ∥ Թերսայէն
ելաւ, ու Սամարիա եկաւ . և Սա-
մարիայի մէջ Յաբիսի որդին Սեղ-
ղումը զարկաւ մեռցուց, ու անոր
տեղը ինքը թագաւոր եղաւ ։

§ Մատ. Ա. 8, 9. Իսկ Հր 1 Կը-
չուի Ազա-
րիա ։
∥ Գ Թագ. ԺԴ. 17։

15 Ու Սեղղումին մնացորդ պատմու-
թիւնը, ու ըրած դաւաճանու-
թիւնը՝ ահա Իսրայէլի թագաւոր-
ներուն յիշատակաց գրքին մէջը
16 գրուած է ։ Ան ատենը Մանայեմ՝
¶ Թափսան ու բոլոր անոր մէջը ե-
ղողները, ու անոր սահմանը զար-
կաւ * մինչև Թերսա" . և չբանալնուն
համար զարկաւ, ու հօն եղող
բոլոր յղի կնիկները ճեղքեց ։

¶ Գ Թագ. Դ. 24։
* Եբր. Թերսայէն.
Ղ Դէ. Ը. 12։
772

17 Յուդայի Ազարիա թագաւորին
երսունութններորդ տարին՝ Իսրա-
յէլի վրայ Գադդիի որդին Մանա-
յեմը թագաւոր եղաւ, ու Սամա-
րիայի մէջ տասը տարի թագաւորեց ։
18 Եւ անիկայ Տէրոջը առջևը չարու-
թիւն ըրաւ . ու իր բոլոր օրերուն
մէջ՝ Իսրայէլին մեղանչել տուող
Նաբատեան Յերոբովամին մեղքե-
րէն ետ չկեցաւ ։

771
† Ա Մն. Ե. 26։ Ես. Թ. 1։ Ովս. Ը. 9։
‡ Եբր. անոր ձեռքը իր հետը ըլլայ ։
§ Դ Թ. ԺԴ. 5։

19 Եւ † Ասորեստանի Փուղ թագա-
ւորը երկրին վրայ եկաւ . ու Մա-
նայեմ հազար տաղանդ արծաթ
տուաւ Փուղին, որ ‡ անիկայ իրեն
օգնական ըլլայ", § թագաւորու-
թիւնը իր ձեռքին մէջ հաստատե-
20 լու համար ։ Ու Մանայեմ՝ աս ար-
ծաթը Ասորեստանի թագաւորին
տալու համար՝ Իսրայէլին բոլոր
հարուստներուն վրայ հարկ դրաւ,
ու ամէն մէկէն յիսունական սիկղ
արծաթ առաւ . և Ասորեստանի
թագաւորը ետ դարձաւ, ու ան
երկրին մէջ չկեցաւ ։
21 Ու Մանայեմին մնացորդ պատ-
մութիւնը, և անոր ամէն ըրածը՝
ահա Իսրայէլի թագաւորներուն
յիշատակաց գրքին մէջը գրուած
22 է ։ Ու Մանայեմ իր հայրերուն
հետ քնացաւ . և անոր տեղը՝ անոր
որդին Փակէիան թագաւոր եղաւ ։

Ն. Ք. Ք.
771

23 Յուդայի Ազարիա թագաւորին
յիսուներորդ տարին՝ Իսրայէլի
վրայ Մանայեմի որդին Փակէիան
թագաւոր եղաւ Սամարիայի մէջ,
24 ու երկու տարի թագաւորեց ։ Եւ
Տէրոջը առջևը չարութիւն ըրաւ,
ու Իսրայէլին մեղանչել տուող
Նաբատեան Յերոբովամին՝ մեղքե-
25 րէն ետ չկեցաւ ։ Եւ անոր զօրա-
պետը Ռովմելայի որդին Փակէէն՝
անոր դէմ գլուխ վերցուց, ու իր
հետը Արգովբը ու Արիէն, ու Գա-
ղաադացիներէն յիսուն մարդ ա-
ռաւ, և Սամարիայի մէջ՝ թա-
գաւորին տանը ‡ ներսի կողմը" զա-
նիկայ զարկաւ մեռցուց . ու անոր
տեղը ինքը թագաւոր եղաւ ։

761
759
‡ Կամ՝ պալատը

26 Եւ Փակէիային մնացորդ պատ-
մութիւնը, ու անոր բոլոր ըրածը՝
ահա Իսրայէլի թագաւորներուն
յիշատակաց գրքին մէջը գրուած
է ։
27 Յուդայի Ազարիա թագաւորին
յիսունուերկուերորդ տարին՝ Իս-
րայէլի վրայ § Ռովմելայի որդին
Փակէէն թագաւոր եղաւ Սամա-
րիայի մէջ, ու քսան տարի թա-
28 գաւորեց ։ Եւ Տէրոջը առջևը չա-
րութիւն ըրաւ, ու Իսրայէլին
մեղանչել տուող Նաբատեան Յե-
րոբովամին մեղքերէն ետ չկեցաւ ։

§ Ես. Է. 1։

29 Իսրայէլի Փակէէ թագաւորին օրե-
րը՝ ∥ Ասորեստանի Թագղաթ փա-
ղասար թագաւորը եկաւ, ու Յի-
յօնը, և Աբէլբեթմաաքան, ու
Յանովէն, և Կադէսը, ու Հասորը,
և Գաղաադը, ու Գալիլեան, և
Նեփթաղիմի բոլոր երկիրը առաւ,
ու անոնց բնակիչները Ասորեստան
30 գերի տարաւ ։ Ու Էլայի որդին
Ովսէէն Ռովմելայի որդւոյն Փա-
կէէին դէմ դաւաճանութիւն ը-
րաւ, և զանիկայ զարկաւ մեռցուց,
ու ¶ անոր տեղը ինքը թագաւոր
եղաւ, Ոզիայի որդւոյն Յովաթա-
մին քսաներորդ տարին ։

740
∥ Ա Մն. Ե. 26։ Ես. Թ. 1։
¶ Գ Թագ. ԺԵ. 20։
739
Ղ Քանի մը տարի անիշխանութենէն ետև. Գլ. ԺԷ. 1։ Ովս. Ժ. 3, 7, 15։

31 Ու Փակէէին մնացորդ պատմու-
թիւնը, և անոր բոլոր ըրածը՝ ահա
Իսրայէլի թագաւորներուն յիշա-
տակաց գրքին մէջը գրուած է ։
32 Իսրայէլի թագաւորին՝ Ռովմե-
լայի որդւոյն Փակէէին երկրորդ
տարին՝ Յուդայի թագաւորը Ո-
զիայի որդին * Յովաթամը թագա-
33 ւոր եղաւ ։ Անիկայ քսանուհինգ
տարեկան էր՝ երբոր թագաւոր
եղաւ, ու Երուսաղէմի մէջ տասն-
ուվեց տարի թագաւորութիւն ը-
րաւ . և անոր մօրը անունը Յե-

75
* Բ Մն. ԻԷ. 1։

Ն. Ք. ՂԲ. 758

բուսա էր , Սաղովկին աղջիկն
34 էր ։ Եւ անիկայ Տէրոջը առջեւը
ուղղութիւն ըրաւ . իր հօրը Ոզիա-
յին բոլոր ըրածին պէս ըրաւ ։
35 Բայց բարձր տեղուանքը չվերցան .
ժողովուրդը տակաւին բարձր տե-
ղերու վրայ զոհ կը մատուցանէին
ու խունկ կը ծխէին ։ Անիկայ
Տէրոջը տանը ամենէն բարձր դու-
ռը շինեց ։
36 Եւ Յովաթամին մնացորդ պատ-
մութիւնը , ու անոր բոլոր ըրածը՝
Յուդայի թագաւորներուն
յիշատակաց գրքին մէջը գրուած
37 է ։ Ան օրերը Տէրը Ասորւոց
Ռասին թագաւորը , ու Ռովմե-
լայի որդին Փակէէն՝ Յուդայի
38 վրայ խրկելու սկսաւ ։ Եւ Յովա-
թամ իր հայրերուն հետ քնացաւ ,
ու իր հայրերուն հետ՝ իր հօրը
Դաւիթին քաղաքին մէջը թա-
ղուեցաւ . ու անոր տեղը՝ անոր
որդին Աքազը թագաւոր եղաւ ։

Իբր 742 Յովաթամին թագաւորութեանը վերջացած ատենը ։

742

## ԳԼ. ԺԶ

1 Աքազին չար վարմունքը ։ 5 Աքազ տեսնելով որ Ռասին ու Փակէէ իր վրայ կը յարձակին . Թագղաթ փաղասարին վարձք տալով՝ անոնց դէմ դնելու կը գրգռէ զանիկայ ։ 10 Աքազ՝ Ուրիա քահանային սեղանի օրինակ մը խրկելով Դամասկոսէն առջի պղնձէ սեղանը իրեն կը յատկացընէ . 17 տաճարը կը կողոպտէ ։ 19 Եզեկիա անոր յաջորդը կ'ըլլայ ։

Իբր 742

1 Ռովմելայի որդւոյն Փակէէին
տասնուեօթներորդ տարին՝
Յուդայի թագաւորին Յովաթա-
մին որդին Աքազը թագաւոր ե-
2 ղաւ ։ Աքազ քսան տարեկան էր՝
երբոր թագաւոր եղաւ , ու Երու-
սաղէմի մէջ տասնուվեց տարի
թագաւորութիւն ըրաւ . և իր
հօրը Դաւիթին պէս՝ իր Տէր Ա-
տուծոյն առջեւը ուղղութիւն չը-
3 րաւ . Հապա Իսրայէլի թագաւոր-
ներուն ճամբուն մէջ քալեց . Ու
իր որդին ալ կրակէ անցուց , ան
ազգերուն գարշելի սովորութիւն-
ներուն համեմատ , որոնք Տէրը
Իսրայէլի որդւոցը առջեւէն վռըն-
4 տեց ։ Եւ բարձր տեղուանքը , ու
բլուրներու վրայ , և ամէն կա-
նանչ ծառերու տակ զոհ կը մա-
տուցանէր ու խունկ կը ծխէր ։
5 Ան ատենը Ասորւոց Ռասին թա-
գաւորը , ու Իսրայէլի թագաւորը՝
Ռովմելայի որդին Փակէէն՝ Երու-
սաղէմի վրայ պատերազմելու եկան ,
ու Աքազը պաշարեցին . բայց պա-
տերազմը շարունակելու կարող չե-
6 ղան ։ Ան ատենը Ասորւոց Ռասին
թագաւորը Եղաթը Ասորիներուն
դարձուց , և Յուդայեանները Եղա-
թէն վռընտեց , ու Ասորիք Եղաթ
եկան , ու հոն բնակեցան մինչև աս

742

7 օրս ։ Եւ Աքազ՝ Ասորեստանի
Թագղաթ փաղասար թագաւորին
դեսպաններ խրկեց՝ ու ըսաւ . Ես
քու ծառադ ու որդիդ եմ . ելիր ,
ու զիս ազատէ Ասորւոց թագաւո-
րին ձեռքէն , ու Իսրայէլի թագա-
ւորին ձեռքէն , որոնք իմ վրաս ե-
8 լեր են ։ Եւ Աքազ Տէրոջը տանը
մէջ , ու թագաւորին տանը գան-
ձերուն մէջ գտնուած արծաթը ու
ոսկին առաւ , և Ասորեստանի թա-
9 գաւորին ընծայ խրկեց ։ Ու Ասո-
րեստանի թագաւորը անոր մտիկ
ըրաւ . և Ասորեստանի թագաւորը
Դամասկոսի վրայ գնաց , ու զա-
նիկայ առաւ , և անոր բնակիչները
Կիրը գերի տարաւ , ու Ռասինը
մեռցուց ։
10 Եւ Աքազ թագաւորը՝ Ասորես-
տանի Թագղաթ փաղասար թա-
գաւորը դիմաւորելու համար՝ Դա-
մասկոս գնաց , ու Դամասկոսի մէջ
եղած սեղանը տեսաւ . և Աքազ
թագաւորը ան սեղանին օրինակը
ու ձեւը՝ անոր բոլոր շինուածքին
համեմատ՝ Ուրիա քահանային խըր-
11 կեց ։ Եւ Ուրիա քահանան՝ Ա-
քազ թագաւորին Դամասկոսէն
խրկած օրինակին նման սեղան մը
շինեց . մինչև Աքազ թագաւորին
Դամասկոսէն գալը՝ Ուրիա քահա-
12 նան այնպէս ըրաւ ։ Ու երբոր
թագաւորը Դամասկոսէն եկաւ ,
թագաւորը սեղանը տեսաւ . և
թագաւորը սեղանին մօտեցաւ ,
ու անոր վրան ողջակէզ մատուց .
13 Եւ իր ողջակէզը ու հացի ընծան
այրեց , ու նուէրը թափեց , և իր
խաղաղութեան զոհերին արիւնը ան
14 սեղանին վրայ սրսկեց ։ Ու Տէրոջը
առջեւը եղող պղնձէ սեղանը տանը
առջեւէն՝ այսինքն նոր սեղանին ու
Տէրոջը տանը մէջտեղէն քաշեց , ու
զանիկայ նոր սեղանին քովը դրաւ
15 դէպ 'ի հիւսիս ։ Եւ Աքազ թա-
գաւորը Ուրիա քահանային հրա-
մայեց՝ ըսելով . Մեծ սեղանին վը-
րայ՝ առաւօտուան ողջակէզը՝ ու իրի-
կուան հացի ընծան . և թագաւո-
րին ողջակէզը՝ ու անոր հացի ըն-
ծան , ու երկրին բոլոր ժողովուրդին
ողջակէզը՝ և անոնց հացի ընծան ու
անոնց նուէրները մատուցանես . ու
ողջակէզներուն բոլոր արիւնը , և
զոհերուն բոլոր արիւնը անոր վրայ
սրսկես . ու պղնձէ սեղանը իմս ըլ-
16 լայ՝ հոն հարցընելու համար ։ Եւ
Ուրիա քահանան Աքազ թագա-
ւորին բոլոր հրամայածին պէս ը-
17 րաւ ։ Ու Աքազ թագաւորը մե-
քենովթներուն սպառուածները
կտրեց , ու աւազանները անոնց
վրայէն վերցուց , ծովն ալ՝ իր

Ն. Ք. ՂԲ. 742

740

739

Ն․ Ք․ Զ․ Ք․ 739

տակը եղող պղնձէ եզներուն վրա-
յէն իջեցուց ․ ու զանիկայ քարա-
18 յատակի մը վրայ դրաւ ։ Եւ Տէ-
րոջը տանը մէջ շինուած շաբաթին
ծածկոցը , ու թագաւորին դուրսի
ճամբան՝ Ասորեստանի թագաւո-
րին պատճառաւը՝ Տէրոջը * տունը
դարձուց ։

* Կամ՝ տունէն

19 Եւ Աքազին գործքերուն մնացորդ
պատմութիւնը ահա Յուդայի թա-
գաւորներուն յիշատակաց գրքին
20 մէջը գրուած է ։ Եւ Աքազ իր
հայրերուն հետ քնացաւ , ու իր
հայրերուն հետ Դաւիթի քաղաքին
մէջը թաղուեցաւ ․ և անոր տեղը
անոր որդին Եզեկիան թագաւոր
եղաւ ։

726 — Բ Մն․ ԻԸ․ 27

## ԳԼ ԺԷ

1 Ովսէէին չար վարմունքը ․ 3 Ովսէէ՝ Սաղմանասարէն նուաճելով անոր դէմ ապստամբութեան խորհուրդ մը կ'ընէ Եգիպտոսի Սովա թագաւորին հետ ․ 5 Սամարացիք իրենց մեղացը համար գերի կը տարուին 24 Սամարիա փոխադրուած օտարազգիները առիւծներէն կը ջարդուին անոնց խառնակ կրօնքը ․

730 — Թագաւորութեան աթոռը ժամանակ մը պարապ մնացեր է Գլ․ ԺԵ․ 30

1 Յուդայի Աքազ թագաւորին եր-
կոտասաներորդ տարին Իսրա-
յէլի վրայ Էլայի որդին Ովսէէն
թագաւոր եղաւ Սամարիայի մէջ
2 ինը տարի թագաւորեց ․ Եւ
Տէրոջը առջեւ չարութիւն ըրաւ
բայց ոչ իրմէ առաջ եղող Իսրա-
3 յէլի թագաւորներուն պէս ․ Անոր
դէմ ելաւ Ասորեստանի Սաղմա-
նասար թագաւորը և Ովսէէ անոր
ծառայ եղաւ , ու անոր հարկ կու
4 տար ․ Եւ Ասորեստանի թագա-
ւորը Ովսէէին վրայ նենգութիւն
գտաւ ․ որովհետև անիկայ Եգիպ-
տոսի Սովա թագաւորին դեսպան-
ներ խրկեր էր , ու Ասորեստանի
թագաւորին ամէն տարուան պէս
հարկ վճարած չէր ․ անոր համար
Ասորեստանի թագաւորը զանիկայ
բռնեց ու բանտի մէջ կապեց ․
5 Եւ Ասորեստանի թագաւորը բո-
լոր երկրին վրայ ելաւ Սամարիայի
վրայ ալ ելաւ ․ ու զանիկայ իրեք
տարի պաշարեց ։
6 Ովսէէին իններորդ տարին՝ Ա-
սորեստանի թագաւորը Սամարիան
առաւ , ու Իսրայէլը Ասորեստան
փոխադրեց , և զանոնք Գովզան
գետին քովը Քաղայի ու Քաբովրի
մէջ , ու Մարաց քաղաքներուն մէ-
7 ջը բնակեցուց ։ Քանզի Իսրայէլի
որդիքը զիրենք Եգիպտոսի երկրէն՝
Եգիպտոսի Փարաւոն թագաւորին
ձեռքին տակէն հանող՝ իրենց Տէր
Աստուծոյն դէմ մեղք գործեցին ,
և ուրիշ աստուածներէն վախցան ․
8 Ու Տէրոջը Իսրայէլի որդւոցը առ-
ջևէն վռնտած ազգերուն կանոն-
ներուն համեմատ , և Իսրայէլի թա-
գաւորներուն ըրած կանոններուն
9 համեմատ քալեցին ։ Ու Իսրայէլի
որդիքը իրենց Տէր Աստուծոյն առ-
ջեւ ուղիղ չեղած բաները գաղտուկ
ըրին , և իրենց ամէն քաղաքներուն
մէջը՝ պահապանաց աշտարակէն
մինչև պարսպաւոր քաղաքը՝ իրենց
10 բարձր տեղեր շինեցին ։ Ու անոնք
ամէն բարձր բլուրներու վրայ , և
ամէն կանանչ ծառերու տակ՝ ի-
րենց արձաններ ու † Աստարովթի
11 կուռքեր կանգնեցին ․ Եւ հոն
ամէն բարձր տեղերու վրայ խունկ
ծխեցին՝ Տէրոջը անոնց առջևէն
վռնտած ազգերուն պէս , ու չար
գործքեր ըրին , ու Տէրը բարկացու-
12 ցին ․ Եւ կուռքերու ծառայու-
թիւն ըրին որոնց համար Տէրը
անոնց ըսեր էր թէ՝ Ատ բանը մի՛
ընէք ։
13 Ու Տէրը բոլոր մարգարէներուն
ու բոլոր տեսանողներուն ձեռքո-
վը Իսրայէլին ու Յուդային վկա-
յութիւն ընելով՝ ըսեր էր ․ Ձեր
չար ճամբաներէն դարձէ՛ք և իմ
պատուիրանքներս ու կանոններս
պահեցէք ան ամէն օրէնքին հա-
մեմատ՝ որն որ ձեր հայրերուն պա-
տուիրեցի ․ ու իմ ծառաներուս՝
մարգարէներուն ձեռքովը ձեզի
14 խրկեցի ․ Բայց անոնք մտիկ չը-
րին հապա իրենց պարանոցը՝
իրենց Տէր Աստուծոյն չհաւատա-
ցող իրենց հայրերուն պարանոցին
15 պէս խստացուցին Եւ անոր կա-
նոնները , ու իրենց հայրերուն հետ
անոր ըրած ուխտը , և անոր
տուած վկայութիւնները մէկդի
ձգեցին , ու ունայնութեան
ետևէ գացին , ու ունայն եղան ,
և իրենց չորս կողմը գտնուած ազ-
գերուն հետևող եղան , որոնց հա-
մար Տէրը իրենց պատուիրեր էր ,
16 որ անոնց պէս չընեն ։ Բայց իրենց
Տէր Աստուծոյն բոլոր պատուի-
րանքները թողուցին , և իրենց
երկու հատ ձուլածոյ որթ շինեցին ,
ու Աստարովթի կուռք շինեցին ,
ու երկինքին բոլոր զօրութիւննե-
րուն երկրպագութիւն ըրին , և
17 Բահաղին ծառայեցին ․ Ու իրենց
տղաքները ու աղջիկները կրակէ
անցուցին , և կախարդութիւն ու
հմայութիւն ըրին , և զիրենք
ծախեցին՝ Տէրոջը առջևը չարու-
թիւն ընելու , ու զանիկայ բարկա-
18 ցընելու ։ Ուստի Տէրը Իսրայէլին
խիստ բարկացաւ , ու զանոնք իր
երեսէն ձգեց ․ անանկ որ ուրիշ չմը-
նաց ․ բայց միայն Յուդայի ցեղը ․
19 Յուդան ալ իր Տէր Աստուծոյն
պատուիրանքները չպահեց ․ հապա

Ն․ Ք․ Զ․ Ք․ 721

† Կամ՝ անտառներ

Ն. Ք. ԳՌ. 721

Իսրայէլին ըրած կանոններովը քա-
20 լեց ։ Եւ Տէրը Իսրայէլին բոլոր սե-
րունդը մերժեց, ու զանոնք չարչա-
րեց, և զանոնք յափշտակողներուն
ձեռքը մատնեց, մինչև որ զանոնք
21 բոլորովին իր երեսէն ձգեց. Քան-
զի Իսրայէլը Դաւիթի տունէն
պատռեց. անոնք ալ Նաբատեան
Յերոբովամը թագաւոր դրին. ու
Յերոբովամ՝ Իսրայէլը Տէրոջը հե-
տեւելէն արգիլեց, ու անոնց մեծ
22 մեղք գործել տուաւ ։ Եւ Իսրա-
յէլի որդիքը Յերոբովամին բոլոր
ըրած մեղքերուն մէջը քալեցին.
23 անոնցմէ ետ չկեցան, Մինչև որ
Տէրը Իսրայէլը իր առջևէն վեր-
ցուց. ինչպէս որ իր բոլոր ծառա-
ներուն՝ մարգարէներուն ձեռքովը
խօսեր էր ։ Այսպէս Իսրայէլը իր
երկրէն Ասորեստան փոխադրուե-
ցաւ մինչև աս օրս ։
24 Ու Ասորեստանի թագաւորը՝
Բաբելոնէն, Քութայէն, Աւա-
յէն, Եմաթէն, ու Սեփարուիմէն
մարդիկներ բերաւ, ու Սամարիայի
քաղաքներուն մէջը՝ Իսրայէլի որ-
դւոց տեղը բնակեցուց. և անոնք
Սամարիան ժառանգեցին, ու անոր
25 քաղաքներուն մէջը բնակեցան ։ Ու
երբոր անոնք սկսան հոն բնակելու,
Տէրոջմէ չէին վախնար. ու Տէրը
անոնց մէջը առիւծներ խրկեց, որ
26 զանոնք կը մեռցընէին ։ Եւ Ասո-
րեստանի թագաւորին խօսեցան,
ու ըսին. Ան ազգերը՝ որ դուն փո-
խադրեցիր՝ ու Սամարիայի քաղաք-
ներուն մէջը բնակեցուցիր, ան երկ-
րին Աստուծոյն կրօնքը չեն գիտեր.
ու անիկայ անոնց մէջը առիւծներ
խրկեր է, և ահա զանոնք կը մեռ-
ցընեն, ան երկրին Աստուծոյն
27 կրօնքը չգիտնալնուն համար ։ Ան
ատենը Ասորեստանի թագաւորը
հրաման ըրաւ՝ ըսելով. Ձեր անկէ
դերի առած քահանաներուն մէկը
հոն տարէք, ու երթան հոն բնա-
կին, ու անիկայ ան երկրին Աստու-
ծոյն կրօնքը թող անոնց սորվեցը-
28 նէ ։ Եւ Սամարիայէն գերի առ-
նուած քահանաներուն մէկը գնաց
Բեթելի մէջ բնակեցաւ, ու անոնց
կը սորվեցընէր թէ ինչպէս Տէրոջմէ
29 վախնալու էին ։ Եւ ամէն մէկ ազգ
իր աստուածները կը շինէր, ու Սա-
մարացւոց շինած բարձր տեղերուն
տուները կը դնէր ամէն մէկ ազգ
30 իր բնակած քաղաքին մէջը ։ Եւ
Բաբելացիք՝ Սաքքովթ բանովթը
շինեցին, ու Քութացիք՝ Ներգաղը
շինեցին, ու Եմաթացիք՝ Ասիմա-
31 թը շինեցին, Եւ Աւացիք՝ Նեբա-
սը ու Թարթակը շինեցին, ու
Սեփարուիմացիք իրենց տղաքը՝

Գլ. ԺԳ. 3. ԺԵ. 29.
Գ Թագ. ԺԱ. 11. 31.
Գ Թագ. ԺԲ. 20. 28.
Գ Թագ. ԺԴ. 16.
Հմր 6
Իբր 678
Եզր. Դ. 2. 10.
Տես Հմր 30.
Գլ. ԺԸ. 34.
Հմր 24.
Եզր. Դ. 9. Ղև. ԺԸ. 21. Բ Օր. ԺԲ. 31.

Սեփարուիմացւոց աստուածներուն՝
Ադրամելէքին ու Անամելէքին հա-
32 մար՝ կրակով կ'այրէին ։ Ուստի
Տէրոջմէ կը վախնային, ու իրենց
պինտ ցած մարդիկներէն բարձր
տեղերուն քուրմեր կ'ընէին, որոնք
անոնց համար բարձր տեղուանքը
33 զոհ կ'ընէին ։ Անոնք Տէրոջմէ կը
վախնային, ու նաև իրենց աս-
տուածներուն ծառայութիւն կ'ը-
նէին ան ազգերուն արարողու-
թիւններովը՝ որոնց մէջէն փոխադ-
րուած էին ։
34 Անոնք մինչև աս օրս առջի սովո-
րութիւններուն պէս կ'ընեն. ոչ
Տէրոջմէ կը վախնան, և ոչ իրենց
կանոնները ու դատաստանները կը
կատարեն, ոչ ալ ան օրէնքը ու
պատուիրանքը, որ Տէրը Յակոբին
որդւոցը տուաւ, որուն անունը
35 Իսրայէլ դրեր էր ։ Եւ Տէրը ա-
նոնց հետ ուխտ ըրեր էր, ու անոնց
պատուիրեր էր՝ ըսելով. Ուրիշ
աստուածներէն չվախնաք, ու ա-
նոնց երկրպագութիւն չընէք, և
անոնց ծառայութիւն չընէք, ու
36 անոնց զոհ չմատուցանէք. Հապա
ձեզ Եգիպտոսի երկրէն մեծ զօրու-
թիւնով ու բարձր բազուկով հա-
նող Տէրոջմէն վախնաք, և անոր
երկրպագութիւն ընէք, ու անոր
37 զոհ մատուցանէք. Եւ ձեզի համար
գրած կանոնները, դատաստաննե-
րը, օրէնքը, ու պատուիրանքը
միշտ զգուշութեամբ 'ի գործ
դնէք, և ուրիշ աստուածներէն
38 չվախնաք. Ու ձեզի հետ ըրած
ուխտս չմոռնաք, և ուրիշ աս-
39 տուածներէն չվախնաք. Հապա ձեր
Տէր Աստուծմէն վախնաք. ու անի-
կայ ձեր ամէն թշնամիներուն ձեռ-
40 քէն ձեզ պիտի ազատէ ։ Բայց ա-
նոնք հնազանդութիւն չըրին, հա-
պա իրենց առջի սովորութիւննե-
41 րուն պէս կ'ընէին ։ Աս ազգերն
ալ Տէրոջմէ կը վախնային,
բայց իրենց կուռքերուն ալ ծա-
ռայութիւն կ'ընէին. նաև անոնց
որդիքը, ու անոնց որդւոցը որդիքը՝
մինչև աս օրս իրենց հայրերուն ը-
րածին պէս կ'ընեն ։

Ն. Ք. ԳՌ. Իբր 678
Բ Գ Թագ. ԺԲ. 31.
Սոփ. Ա. 5.
Ծն. ԼԲ. 28. ԼԵ. 10. Գ Թագ. ԺԱ. 31.
Դատ. Զ. 10.
Եւ. Ի. 5.
Ել. Զ. 6. Բ Օր. Ժ. 20.
Բ Օր. Ե. 32.
Բ Օր. Դ. 23.
Հմր 32. 33.

## ԳԼ. ԺԸ.

1 Եզեկիային բարի վարմունքը ։ 4 Անիկայ կռա-
պաշտութիւնը բնաջինջ կ'ընէ, ու յաջողութիւն
կը գտնէ ։ 9 Սամարացիք գերի կը տարուին
իրենց մեղքերուն համար ։ 13 Սենեքերիմ՝
Յուդայի վրայ կը յարձակի, ու անոր վրայ
հարկ մը դնելով՝ խաղաղութիւն կ'ընէ ։ 17
Նորէն Սենեքերիմ Ռափսակը կը խրկէ. ան
ալ Եզեկիան կը նախատէ, և հայհոյութեան
խօսքերով ժողովուրդը ապստամբութեան կը
գրգռէ ։

1 Իսկ Իսրայէլի թագաւորին՝ Էլայի
որդւոյն Ովսէէին երրորդ տա-

Իբր 726

Ն. Ք. Իբր 726

րին՝ Յուդայի Աքազ Թագաւորին
որդին Եզեկիան Թագաւոր եղաւ ։
2 Քսանուհինգ տարեկան էր՝ երբոր
Թագաւոր եղաւ , ու Երուսաղէմի
մէջ քսանուինը տարի Թագաւո-
րութիւն ըրաւ . և անոր մօրը ա-
նունը Աբիա էր , Զաքարիային
3 աղջիկն էր ։ Եւ իր հօրը Դաւի-
թին բոլոր ըրածին պէս՝ Տէրոջը
4 առջևը ուղղութիւն ըրաւ ։ Ասի-
կայ բարձր տեղուանքը վերցուց ,
ու արձանները կոտրտեց , և Աստա-
րովթի կուռքերը կտրեց , ու Մով-
սէսին շինած պղնձէ օձը կտոր
կտոր ըրաւ , ( քանզի մինչև ան
օրերը Իսրայէլի որդիքը անոր խունկ
կը ծխէին , ) ու զանիկայ *Նէես-
5 թան կոչեց ։ Անիկայ Իսրայէլի
Տէր Աստուծոյն ապաւինեցաւ .
և անկէ ետքը Յուդայի բոլոր
Թագաւորներուն մէջ անոր նմանը
չեղաւ , ոչ ալ անկէ առաջ եղող-
6 ներուն մէջ . Ու Տէրոջը յարե-
ցաւ , և անոր ետևէն չխոտորեցաւ ,
ու Տէրոջը Մովսէսին պատուիրած
7 պատուիրանքները պահեց ։ Եւ
Տէրը անոր հետ էր . և ուր որ
կ'երթար , յաջողութիւն կը գըտ-
նէր ։ Եւ Ասորեստանի Թագաւո-
րէն ապստամբեցաւ , ու անոր
8 ծառայութիւն չըրաւ ։ Անիկայ
Փղշտացիները զարկաւ մինչև Գա-
զա՝ ու անոր սահմանները , պա-
հապանաց աշտարակէն մինչև պա-
րըսպաւոր քաղաքը ։
9 Եւ եղաւ որ Եզեկիա Թագաւո-
րին չորրորդ տարին , որ Իսրայէլի
Թագաւորին՝ Էլայի որդւոյն Ովշ-
էէին եօթներորդ տարին էր ,
Ասորեստանի Սաղմանասար Թա-
գաւորը Սամարիայի վրայ ելաւ , ու
10 զանիկայ պաշարեց . Եւ իրեք տա-
րիէն ետքը զանիկայ առաւ . Սա-
մարիան՝ Եզեկիային վեցերորդ տա-
րին՝ ( այսինքն Իսրայէլի Թագաւո-
րին Ովսէէին իններորդ տարին )
11 առնուեցաւ ։ Ու Ասորեստանի
Թագաւորը՝ Իսրայէլը Ասորեստան
փոխադրեց , և զանոնք Գովզան
գետին քովը՝ Քաղայի ու Քաբով-
րի մէջ , ու Մարաց քաղաքներուն
12 մէջը դրաւ . Վասն զի անոնք
իրենց Տէր Աստուծոյն ձայնին ա-
կանջ չդրին , ու անոր ուխտը չը-
պահեցին , և Տէրոջը ծառային
Մովսէսին ամէն պատուիրածները
մտիկ չըրին , ու 'ի գործ չդրին ։
13 Ու Եզեկիա Թագաւորին չո-
րեքտասաներորդ տարին՝ Ասորես-
տանի Սենեքերիմ Թագաւորը Յու-
դայի բոլոր պարսպաւոր քաղաք-
ներուն վրայ ելաւ , ու զանոնք
14 առաւ ։ Եւ Յուդայի Եզեկիա
Թագաւորը Լաքիսը մարդ խրկեց
Ասորեստանի Թագաւորին՝ ըսե-
լով . Մեղայ . վրայէս ետ դարձիր .
ինչ որ իմ վրաս դնես՝ կը հատուցա-
նեմ ։ Ու Ասորեստանի Թագաւո-
րը Յուդայի Եզեկիա Թագաւո-
րին վրայ իրեք հարիւր տաղանդ
արծաթ՝ ու երսուն տաղանդ ոսկի
15 հարկ դրաւ ։ Ու Եզեկիա՝ Տէրոջը
տանը մէջ , և Թագաւորին տանը
գանձերուն մէջ գտնուած բոլոր
16 արծաթը տուաւ ։ Ան ատենը Ե-
զեկիա Տէրոջը տաճարին դռներուն
ու դրանդիքներուն վրայի ոսկին քա-
կեց , որ ինքը՝ Յուդայի Եզեկիա
Թագաւորը զանոնք պատեր էր , ու
Ասորեստանի Թագաւորին տուաւ ։

Իբր 710

17 Եւ Ասորեստանի Թագաւորը՝
Թարաթանը , Ռաբսարիսը , ու
Ռափսակը շատ զօրքով Լաքիսէն
Երուսաղէմ խրկեց Եզեկիա Թա-
գաւորին . անոնք ալ ելան Երու-
սաղէմ եկան , ու հոն հասնելով՝
Թափիչի ագարակին ճամբան ե-
ղող վերի աւազանին ջրմուղին վը-
18 րայ կայնեցան , Ու Թագաւորը
կանչեցին . և Քեղկեայի որդին Ե-
ղիակիմ՝ պալատին հազարապետը ,
ու Սեբնա ատենադպիրը , ու յիշա-
տակաց դպիր Ասափի որդին Յո-
վաքը՝ անոնց ելան ։
19 Եւ Ռափսակ անոնց ըսաւ . Ե-
զեկիային ըսէք . Մեծ Թագաւորը՝
Ասորեստանի Թագաւորը այսպէս
կ'ըսէ . Ի՞նչ է ատ յոյսը՝ որուն
20 դուն կ'ապաւինիս . Դուն ըսիր .
Պատերազմի համար խորհուրդ ու
զօրութիւն ունիմ . բայց շրթունքի
խօսքեր են . հիմա որո՞ւն ապաւի-
21 նելով՝ ինծմէ ապստամբեցար ։ Ա-
հա դուն ան ջախջախած եղէգէ ցու-
պին՝ Եգիպտոսին ապաւինեցար , որ
եթէ անոր մէկ մարդ մը կռթընի ,
ձեռքը պիտի մտնէ , ու զանիկայ
պիտի ծակէ . Եգիպտոսի Փարաւոն
Թագաւորը բոլոր իրեն ապաւինող-
22 ներուն այնպէս է ։ Բայց թէ որ
ինծի ըսէք թէ՝ Մենք մեր Եհովայ
Աստուծոյն կ'ապաւինինք , ասիկայ
ան չէ՞ , որուն բարձր տեղերը ու
սեղանները Եզեկիան վերցուց , և
Յուդային ու Երուսաղէմին ըսաւ՝
Միայն աս սեղանիս առջևը Երու-
սաղէմի՝ մէջ երկրպագութիւն ը-
23 րէք ։ Ու հիմա իմ տիրոջս Ասո-
րեստանի Թագաւորին †հետ հաշ-
տուէ՛ , ու քեզի երկու հազար ձի
տամ , թէ որ դուն քու կողմանէդ
անոնց վրայ հեծնողներ դնելու կա-
24 րող ես ։ Եւ իմ տիրոջս պինտ
պզտիկ ծառաներէն մէկ կուսակա-
լին ի՞նչպէս կրնաս դէմ դնել , որ
դուն կառքերու ու ձիերու համար

Իբր 725

Իբր 723

Իբր 721

713

Ն. Ք. 713

Ն. Ք. ԳՔ. ԻՐ 710

25 Եգիպտոսին կ'ապաւինիս ։ Հիմա
 աս երկրիս վրայ արդեօք առանց
Եհովայի հրամանի՞ն ելեր եմ՝ զա-
նիկայ աւրելու համար. Ինծի Ե-
հովան ըսաւ. Ա՛ն երկրին վրայ ելիր,
ու զանիկայ աւրէ ։
26 Ու Քեղկեայի որդին Եղիակիմը,
և Սեբնան, ու Յովաքը՝ Ռափսա-
կին ըսին. Շնորհք ըրէ, քու ծա-
ռաներուդ հետ *Ասորերէն խօսէ, — *Կամ՝ Քաղ-դէարէն
քանզի մենք կը հասկընանք, ու մե-
զի հետ Եբրայեցերէն մի՛ խօսիր որ
պարսպին վրայ եղող ժողովուրդը
27 լսէ ։ Բայց Ռափսակ անոնց ըսաւ,
Միթէ աս խօսքերը խօսելու համար
իմ տէրս միայն քու տիրոջդ ու քեզի՞
միայն խրկեց. չէ՞ որ աս մարդիկնե-
րուն ալ՝ որոնք պարսպին վրայ կը
նստին, ձեզի հետ իրենց աղբը ու-
տելու, ու իրենց մէզը խմելու ։
28 Եւ Ռափսակ ոտք ելաւ, ու մեծ
ձայնով մը Եբրայեցերէն աղաղա-
կեց, ու խօսեցաւ՝ ըսելով. Մեծ
թագաւորին՝ Ասորեստանի թա-
29 գաւորին խօսքը մտիկ ըրէք. Թա-
գաւորը այսպէս կ'ըսէ. *Եզեկիան — *Բ Մն. ԼԲ. 15.
ձեզ չխաբէ. քանզի անիկայ չկրնար
30 ձեզ †անոր ձեռքէն* ազատել. Ու — †Կամ՝ իմ ձեռքէս
Եզեկիան ձեզ Եհովային չյուսացը-
նէ՝ ըսելով. Եհովան մեզ անշուշտ
պիտի ազատէ, ու աս քաղաքը Ա-
սորեստանի թագաւորին ձեռքը
31 պիտի չտրուի ։ Եզեկիային մտիկ
մի ընէք. քանզի Ասորեստանի թա-
գաւորը այսպէս կ'ըսէ. Ինծի հետ — Զ Ծն. ԼԲ. 20. ԼԳ. 11. Առակ. ԺԸ. 16.
հաշտութիւն ըրէք, ու ինծի ելէք.
և ամէն մարդ իր որթէն՝ ու ամէն
մարդ իր թզենիէն ուտէ, և ամէն
մարդ իր ջրհորին ջուրէն խմէ ։
32 Մինչև որ ես գամ, ու ձեզ ձեր
երկրին պէս մէկ երկիր մը՝ ցորենի — ԺԲ Օր. Ը. 7, 8.
ու գինիի երկիր մը՝ հացի ու այգի-
ներու երկիր մը՝ իւղ տուող ձիթե-
նիներու ու մեղրի երկիր մը տա-
նիմ, որ ապրիք ու չմեռնիք. ու
Եզեկիային մտիկ մի՛ ընէք, քանզի
ձեզ գլխէ կը հանէ՝ ըսելով. Եհո-
33 վան մեզ պիտի ազատէ ։ ԼՄիթէ — Լ Գլ. ԺԹ. 12. Բ Մն. ԼԲ. 14. Ես. Ժ. 10, 11.
ազգաց աստուածները Ասորեստանի
թագաւորին ձեռքէն՝ ամէն մէկը իր
34 երկիրը կրցա՞ւ ազատել ։ *Եմաթի — *Գլ. ԺԹ. 13.
ու Արփաթի աստուածները ո՞ւր
են. Սեփարուիմի, Անայի ու *Ա- — *Գլ. ԺԷ. 24.
ւայի աստուածները ո՞ւր են. միթէ
անոնք Սամարիան իմ ձեռքէս ա-
35 զատեցի՞ն. Երկիրներուն ամէն աս-
տուածներէն ո՞րը իր երկիրը իմ
ձեռքէս ազատեց, Նոր Եհովան — Ն Դան. Գ. 15.
Երուսաղէմը իմ ձեռքէս ազա-
տէ ։
36 Բայց ժողովուրդը լուռ կեցաւ,
և անոր պատասխան մը չտուաւ.
քանզի թագաւորը հրաման ըրեր
էր՝ ըսելով. Անոր պատասխան մի
տաք ։ — Ք. Ք. ԳՔ. ԻՐ 710
37 Ու Քեղկեայի որդին Եղիակիմ՝
պալատին հազարապետը, և Սեբնա
ատենադպիրը, ու յիշատակաց դը-
պիր Ասափի որդին Յովաքը՝ *հան- — *Ես. ԼԳ. 7.
դերձնին պատռած՝ Եզեկիային գա-
ցին, ու Ռափսակին խօսքերը ա-
նոր պատմեցին ։

## ԳԼ. ԺԹ

1 Եզեկիա սուգ ընելով Եսայիին մարդ կը խըր-
կէ որ իրենց համար աղօթք ընէ ։ 6 Եսայի
զանոնք կը մխիթարէ ։ 8 Սենեքերիմ Թա-
րակա թագաւորին դէմ պատերազմելու գա-
ցած ատենը՝ նախատալից նամակ մը կը խրկէ
Եզեկիային ։ 14 Եզեկիային աղօթքը ։ 20
Եսայիին մարգարէութիւնը՝ Սենեքերիմին հը-
պարտութեանը ու կործանմանը, և Սիոնին
ըլլալու բարիքին վրայով ։ 35 Հրեշտակ մը
Ասորեստանի զօրքերը կը ջարդէ ։ 36 Սենե-
քերիմ իր որդւոցմէն կը սպաննուի Նինուէի
մէջ ։

1 Ու *երբոր Եզեկիա թագաւորը — 710
լսեց, իր հանդերձները պատ- — *Ես. ԼԷ. 1, Ա.
ռեց, ու քուրձ հագաւ, և Տէրոջը
2 տունը մտաւ. Ու Եղիակիմ՝ պալա-
տին հազարապետը, և Սեբնա ատե-
նադպիրը, ու քահանաներուն ծե-
րերը քուրձեր հագած՝ Ամովսի որ-
դւոյն Եսայի մարգարէին խրկեց ։
3 Եւ անոր ըսին. Եզեկիա այսպէս
կ'ըսէ. Այսօր նեղութեան, կըշ-
տամբանաց ու նախատանաց օր է.
քանզի տղաքը մինչև ծնանելու
վայրկեանը հասան, բայց ծնանելու
4 ոյժ չկայ ։ ԵԿարելի է որ քու Տէր — Ե Բ Թագ. ԺԶ. 12.
Աստուածդ Ռափսակին բոլոր խօս-
քերը լսէ, ՖորՆ որ իր տէրը Ասո- — Ֆ Գլ. ԺԸ. 35.
րեստանի թագաւորը խրկեց՝ կեն-
դանի Աստուածը նախատելու հա-
մար, ու քու Տէր Աստուածդ ան
իր լսած խօսքերուն համար *յան- — *Սաղ. Ծ. 21.
դիմանութիւն տայ. ուրեմն դուն
գտնուող մնացորդին համար ա-
5 ղօթք ըրէ ։ Ու Եզեկիա թագա-
ւորին ծառաները Եսայիին գացին ։
6 ԻՈւ Եսայի անոնց ըսաւ. Ձեր տի- — Ի Ես. ԼԷ. 6, Ա.
րոջը ասանկ ըսէք. Տէրը այսպէս
կ'ըսէ. Մի՛ վախնար ան լսած խօս-
քերէդ, որոնցմով ԼԱսորեստանի — Լ Գլ. ԺԸ. 17.
թագաւորին ծառաները զիս հայ-
7 հոյեցին ։ Ահա՛ ես անոր վրայ Իմէկ — Ի Հմր 35, 36, 37. Երեմ. ԾԱ. 1.
ոգի մը կը խրկեմ, ու մէկ լուր մը
լսելով՝ իր երկիրը պիտի դառնայ.
ու զանիկայ իր երկրին մէջը սրով
պիտի կործանեմ ։
8 Եւ Ռափսակ դարձաւ, ու Ասո-
րեստանի թագաւորը գտաւ, որ
Լեբնայի հետ կը պատերազմէր.
վասն զի լսած էր որ ԸԼաքիսէն — Ը Գլ. ԺԸ. 14.
9 չուեր է ։ Ու ԻՍԵՆԵՔԵՐԻՄ Եթէով- — Ի Տես Թագ. ԻԳ. 27.
պացւոց Թարակա թագաւորին հա-
մար լսեց, որ կ'ըսէին. Ահա՛ անի-
կայ քեզի հետ պատերազմելու ելեր

Ն. Ք. ԳԲ.
710

է. ու նորէն Եզեկիային դեսպան-
10 ներ խրկեց՝ ըսելով. Յուդայի Եզե-
կիա Թագաւորին այսպէս խօսիք ու
ըսէք. Ան քու Աստուածդ՝ որուն
դուն ապաւիներ ես, թող քեզ
չխաբէ ըսելով. Երուսաղէմը Ա-
սորեստանի Թագաւորին ձեռքը
11 պիտի չտրուի։ Ահա դուն լսեցիր
ինչ որ Ասորեստանի Թագաւորնե-
րը բոլոր երկիրներուն ըրին, ու
ինչպէս զանոնք բոլորովին կործա-
նեցին, ու հիմա դուն պիտի ազա-
12 տիս։ Միթէ իմ հայրերուս կոր-
ծանած ազգերուն՝ այսինքն Գոզա-
նին, Խառանին, Ռեսեփին, ու
Թելասարի մէջ եղող Եդեմի որ-
դւոցը աստուածները զանոնք ա-
13 զատեցի՞ն։ Ո՞ւր է Եմաթի Թա-
գաւորը, ու Արփադի Թագաւորը,
ու Սեփարուիմ քաղաքին, Անա-
յին, և Աւային Թագաւորը։
14 Ու Եզեկիա նամակը դեսպաննե-
րուն ձեռքէն առաւ, ու զանիկայ
կարդաց. և Տէրոջը տունը ելաւ.
ու Եզեկիա Տէրոջը առջևը *բացաւ
15 զանիկայ։ Ու Եզեկիա Տէրոջը
առջևը աղօթք ըրաւ, ու ըսաւ.
Ով Տէր Աստուած Իսրայէլի, որ
քերովբէներուն մէջը կը նստիս,
երկրիս ամէն թագաւորութիւննե-
րուն վրայ Աստուած մինակ դուն
ես. երկինքը ու երկիրը դուն ըս-
16 տեղծեցիր։ Ո՛վ Տէր ականջդ
խոնարհեցուր ու լսէ. ով Տէր՝
աչքերդ բաց ու նայէ. և լսէ Սե-
նեքերիմին խօսքերը, որ խրկեց
կենդանի Աստուածը նախատելու
17 համար։ Ով Տէր, իրաւցընէ Ա-
սորեստանի Թագաւորները ազգերը
18 ու անոնց երկիրը աւրեցին, Եւ ա-
նոնց աստուածները կրակի տուին.
վասն զի անոնք Աստուած չէին,
հապա մարդու ձեռագործ՝ փայտ
ու քար էին. անոր համար զանոնք
19 կորսնցուցին։ Եւ հիմա դուն ով
Տէր Աստուած մեր՝ ազատէ մեզ
անոր ձեռքէն, որպէս զի երկրիս
բոլոր թագաւորութիւնները գիտ-
նան, որ Տէր Աստուած՝ միայն
դուն ես։
20 Ու Ամովսի որդին Եսային Եզե-
կիային մարդ խրկեց՝ ըսելով. Իս-
րայէլի Տէր Աստուածը այսպէս
կ՚ըսէ. Ասորեստանի Սենեքերիմ
Թագաւորին համար ինծի ըրած
21 աղօթքդ լսեցի։ Անոր վրայով
Տէրոջը ըսած խօսքը աս է.
Սիօնի կոյս աղջիկը քեզ անար-
գեց, քեզ ծաղր ըրաւ. Երուսա-
ղէմի աղջիկը քու ետևէդ գլուխ
շարժեց։
22 Դուն ո՞վ նախատեցիր ու հայ-
հոյեցիր, ու որո՞ւն վրայ ձայնդ

Ն. Ք. ԳԲ. 710 · Գւ. Ժը. 5։ · Գւ. Ժր. 33։ · Եզեկ. ԻԷ. 23։ · Գւ. Ժը. 34։ · Ես. ԼԷ. 14։ · Կամ՝ տարածեց · Թագ. Դ. 4։ Սաղ. Ճ. 1։ · Թագ. Ժը. 39։ Ես. Խդ. 6։ Երեմ. Ժ. 10։ 11 12։ · Սաղ. Լա. 2։ · Մն. Զ. 40։ · Հմ. 4։ · Սաղ. ՃԺԵ. 4։ Երեմ. Ժ. 3։ · Սաղ. Ձգ. 15։ · Ես. ԼԷ. 21։ · Սաղ. ԿԵ. 2։ · Ողբ. Բ. 13։ · Յոբ. Ժզ. 4։ Սաղ. ԻԲ. 7. 8։ Ողբ. Բ. 15։

վերցուցիր. և աչքերդ Իսրայէլի
Սուրբին դէմ վեր վերցուցիր։
23 Քու դեսպաններուդ ձեռքովը
Տէրը նախատելով ըսիր. Իմ
կառքերուս շատութիւնովը լեռ-
ներուն բարձրութիւնը՝ Լիբանանու
քովերը ելայ, ու անոր բարձր եղե-
ւինները ու ընտիր մայրերը †պիտի
կտրեմ". ու անոր վերջին բնա-
կութիւնը անոր ‡Կարմեղոսին ան-
տառը ‖պիտի մտնեմ"։
24 Ես փորեցի, ու օտար ջուրերը
խմեցի, ու §պաշարուած տեղե-
րուն" բոլոր գետերը ոտքերուս
թաթովը ցամքեցուցի։
25 Միթէ լսած չե՞ս որ ասիկայ
շատոնցմէ ես կազմեցի, ու առջի
օրերէն 'ի վեր ձևակերպեցի. հիմա
հասուցի, որ դուն պարսպաւոր
քաղաքները աւերակի հողակոյտ-
ներու դարձնես։
26 Ուստի անոնց բնակիչներուն
ձեռքը կարճ ըլլալուն համար՝
զարհուրեցան ու ամչցան. անոնք
դաշտի խոտի պէս, և կանանչ
բանջարի պէս, տանիքի խոտի
պէս, և դեռ չհասած ու խորշակէն
զարնուած հունձքի պէս եղան։
27 Բայց ես քու բնակութիւնդ,
ելլելդ ու մտնելդ, և ինծի ունեցած
սրտմտութիւնդ գիտեմ։
28 Որովհետև ինծի ունեցած սրտ-
մտութիւնդ, ու քու ամբարտա-
ւանութիւնդ իմ ականջներուս ե-
լաւ, ես ալ իմ կարթս քու քի-
թըդ՝ և իմ սանձս քու բերանդ
պիտի դնեմ, ու քու եկած ճամ-
բայէդ քեզ ետ պիտի դարձնեմ։
29 Եւ ասիկայ քեզի նշան ըլլայ.
աս տարի ինքիրմէ բուսածը, ու
երկրորդ տարին՝ ինկած հատերէն
բուսածը պիտի ուտէք. ու երրորդ
տարին՝ ցանեցէք ու հնձեցէք, և
այգիներ տնկեցէք, ու անոնց պը-
տուղը կերէք։
30 Եւ Յուդայի տանը ազատուած
մնացորդը՝ վարէն արմատ պիտի
արձակէ, ու վերէն պտուղ պիտի
տայ։
31 Քանզի Երուսաղէմէն մնացորդ,
ու Սիօն լեռնէն ազատուած պիտի
ելլէ. ասիկայ զօրաց Տէրոջը նա-
խանձը պիտի ընէ։
32 Անոր համար Ասորեստանի Թա-
գաւորին վրայով՝ Տէրը այսպէս
կ՚ըսէ. Անիկայ աս քաղաքը պիտի
չմտնէ, ու անոր նետ պիտի չնետէ,
և անոր առջևը վահանով պիտի
չգայ, ու անոր դէմ պատնէշ պի-
տի չկանգնէ.
33 Իր եկած ճամբայէն ետ պիտի
դառնայ, ու աս քաղաքը պիտի
չմտնէ, կ՚ըսէ Տէրը։

Ն. Ք. ԳԲ. 710 · Սաղ. Ղա. 22. Ես. Ե. 24։ Երեմ. Ծա. 5։ · Գւ. Ժը. 17։ · Սաղ. Ի. 7։ · † Կամ՝ կըտրեցի. · ‡ Կամ՝ պըտղաբեր ա. պարակին. Ես. Ժ. 18։ · ‖ Կամ՝ մը. տայ։ · § Կամ՝ Ե. գիպտոսի · Ես. ԻԵ. 7։ · Ես. Ժ. 5։ · Սաղ. ՃԻԹ. 6։ · Սաղ. ՃԼԹ. 1. Ա։ · Յոբ. Խա. 2. Եզեկ. ԻԹ. 4։ Լը. 4։ Ամով. Դ. 2։ · Հմ. 33. 36. 37։ · Թագ. Բ. 34։ Գւ. Ի. 8. 9։ Ես. Է. 11. 14։ Ղուկ. Բ. 12։ · Բ. Մն. Լը. 22. 23։ · Ես. Թ. 7։

Ն. Ք. ԳՔ.
710

ֆ Գլ. ի. 6։
ա Գ Թագ. ժա 12, 13։
բ Բ Մն. լբ. 21։ Ես. լէ. 36։
գ Ծն. ժ. 11։
709
դ Բ Մն. լբ. 21։
ե Հմր 7։
զ Եզր. դ. 2։

34 Եւ ֆայս քաղաքը պիտի պաշտ-
պանեմ, ու զանիկայ ազատեմ
ինծի համար ու աիմ ծառայիս
Դաւիթին համար։
35 Ու բեղաւ որ ան գիշերը Տէրոջը
հրեշտակը ելաւ, և Ասորեստանի
բանակին մէջը հարիւր ութսուն-
ուհինգ հազար մարդ զարկաւ. ու
երբոր առաւօտուն կանուխ ելան,
ահա անոնց ամէնը մեռած մարմին-
36 ներ էին։ Եւ Ասորեստանի Սենե-
քերիմ թագաւորը չուեց գնաց,
ու դարձաւ գՆինուէի մէջ նստաւ։
37 Ու երբոր անիկայ իր աստուծոյն
Նեսրաքին տանը մէջ երկրպագու-
թիւն կ'ընէր, անոր որդիքը դԱդ-
րամելէք ու Սարասար եզանիկայ
սրով զարկին, ու Արարատի երկի-
րը փախան. և անոր տեղը՝ անոր
որդին զԱսորդան թագաւոր ե-
ղաւ։

ԳԼ. Ի

1 Եզեկիա իր մահուան լուրը առնելով՝ աղօթք կ'ընէ. ու կեանքը երկընցնելուն խոստմունքը կ'առնէ։ 8 Արեւը տասը աստիճան ետ կ'երթայ՝ ան խոստմունքին նշան մը ըլլալու համար։ 12 Մարովդաք բաղադան՝ աս եղած հրաշքին համար Եզեկիային տեսութիւնը մարդ կը խրկէ, ու անոր ունեցած գանձերուն կը տեղեկանայ։ 14 Եսայի աս բաները իմանալով՝ հրէից Բաբիլոն գերի տարուելուն վրայ կը մարգարէանայ։ 20 Մանասէ՝ Եզեկիային տեղը կը յաջորդէ։

713
ա Բ Մն. լբ. 24, &c։ Ես. լը. 1. &c։
բ Բ Թագ. ժէ. 23։
գ Ծն. ժէ. 1։ Գ Թագ. ը. 6։
դ Նեեմ. ժգ. 22։
ե Ա Թագ. թ. 16։ ժ. 1։
զ Գլ. ժթ. 20։ Սաղ. կե. 2։
է Սաղ. լթ. 12։ Եզ. 8։
ը Գլ. ժթ. 34։

1 աԱյն օրերը Եզեկիա մահուան աս-
տիճանը հիւանդացաւ։ Ու Ա-
մովսի որդին Եսայի մարգարէն ա-
նոր եկաւ, ու անոր ըսաւ. Տէրը
այսպէս կ'ըսէ. բՏանդ համար
պատուէր տուր. քանզի դուն
մեռնելու ես, ու պիտի չապրիս։
2 Եւ անիկայ իր երեսը պատին դար-
ձուց, ու Տէրոջը աղօթք ըրաւ՝
3 ըսելով. Ո՛վ Տէր՝ կ'աղաչեմ, գքու
առջեւդ ճշմարտութեամբ, ու կա-
տարեալ սրտով քալելս՝ և քու
աչքիդ առջեւը բարի եղածը ընելս
դյիշէ. ու Եզեկիա մեծ լացով մը
լացաւ։
4 Ու Եսայի տակաւին միջին գա-
ւիթէն չելած՝ Տէրոջը խօսքը անոր
5 եղաւ՝ ըսելով. Դարձիր, ու իմ
ժողովուրդիս եիշխանին՝ Եզեկիա-
յին ըսէ. Քու հօրդ Դաւիթին
Տէր Աստուածը այսպէս կ'ըսէ.
զՔու աղօթքդ լսեցի, էքու արտա-
սուքները տեսայ. ահա քեզ պի-
տի բժշկեմ, ու երրորդ օրը Տէ-
6 րոջը տունը պիտի ելլես։ Եւ
քու օրերուդ վրայ տասնուհինգ
տարի պիտի աւելցնեմ. ու
քեզ ու աս քաղաքը Ասորեստա-
նի թագաւորին ձեռքէն պիտի ա-
զատեմ, և ըայս քաղաքին պաշտ-
պանութիւն պիտի ընեմ ինծի
համար ու իմ ծառայիս Դաւի-
7 թին համար։ Ու թԵսայի ըսաւ.
Քանի մը չոր թուզ առէք. ու ա-
ռին, և վէրքին վրայ դրին, ու
ողջացաւ։
8 Ու Եզեկիա՝ Եսայիին ըսաւ.
Տէրոջը զիս բժշկելուն՝ ու երրորդ
օրը Տէրոջը տունը ելլելուս ժնշանը
9 ի՞նչ ըլլայ։ Ու Եսայի ըսաւ.
իԱսիկայ քեզի Տէրոջմէ նշան ըլլայ՝
թէ Տէրը իր ըսած խօսքը պիտի
կատարէ. Ստուերը՝ կամ տասը
աստիճան յառաջ երթայ, կամ
10 տասը աստիճան ետ դառնայ։ Ու
Եզեկիա ըսաւ. Ստուերին տասը
աստիճան յառաջ երթալը դիւրին
է. չէ. հապա ստուերը տասը աս-
11 տիճան ետ դառնայ։ Ու Եսայի
մարգարէն Տէրոջը աղաղակեց. ու
լտասը աստիճան ետ դարձուց
ստուերը ան աստիճաններէն որ Ա-
քազին արեւու ժամացոյցին վրայ
իջած էր։
12 խԱն ատենը Բաբիլոնի թա-
գաւորը՝ Բաղադանի որդին *Մա-
րովդաք բաղադանը նամակներ ու
ընծաներ խրկեց Եզեկիային, քան-
զի Եզեկիային հիւանդ ըլլալը լսեր
13 էր։ Ու ծԵզեկիա կանոնց մտիկ
ըրաւ", և թանկագին բաներուն
բոլոր տունը՝ արծաթը, ու ոսկին,
ու խունկերը, և պատուական եղը,
ու իր զէնքերուն բոլոր տունը և
իր գանձերուն մէջը բոլոր գտնուա-
ծը ցուցուց. իր տանը մէջ՝ և
իր բոլոր տէրութեանը մէջ բան մը
չմնաց, որ Եզեկիա անոնց չցու-
ցընէ։
14 Ու Եսայի մարգարէն Եզեկիա
թագաւորին եկաւ, ու անոր ը-
սաւ. Աս մարդիկները ի՞նչ ըսին,
և ո՞ւսկից եկան քեզի. ու Եզեկիա
ըսաւ. Հեռու տեղէ՝ Բաբիլոնէն
15 եկան։ Եւ անիկայ ըսաւ. Քու
տանդ մէջ ի՞նչ տեսան. ու Եզե-
կիա ըսաւ. հՏանս մէջ ինչ որ կար՝
տեսան, ու գանձերուս մէջ անոնց
16 չցուցուցած բանս չմնաց։ Ան ա-
տենը Եսայի՝ Եզեկիային ըսաւ.
17 Տէրոջը խօսքը մտիկ ըրէ. Ահա
օրեր կու գան՝ որ քու տանդ մէջ
ինչ որ կայ, ու քու հայրերդ մինչեւ
աս օրս ինչ որ ժողվեցին, ձԲա-
բիլոն պիտի տարուի. մէկ բան մը
18 պիտի չմնայ. կ'ըսէ Տէրը. Ու քեզ-
մէ ելլելու քու ծնանելու որդինե-
րէդ ղպիտի առնեն ու ճանոնք
Բաբիլոնի թագաւորին պալատին
19 մէջը ներքինիներ պիտի ըլլան։ Ու
Եզեկիա Եսայիին ըսաւ. մՏէրոջը
խօսքը՝ որ դուն ըսիր, բարի է.
նաեւ ըսաւ. Բարի չէ՞, որովհետեւ

Ն. Ք. ԳՔ.
713
թ Ես. լը. 21։
ժ Տես Դատ. զ. 17, 37, 39։ Ես. է. 11, 14։ լը. 22։
ի Տես Ես. լը. 7, 8։
լ Տես Յեսու. ժ. 12, 14։ Ես. լը. 8։
712
խ Ես. լթ. 1, &c։
* Եբր. Բարովդաք բաղադանը
ծ Բ Մն. լբ. 27, 31։
կ Կամ՝ անոնց վրայ ուրախացաւ. տես Ես. լթ. 2։
հ Հմր 18։
ձ Գլ. իդ. 13։ իե. 13։ Երեմ. իէ. 21, 22։ ծբ. 17։
ղ Գլ. իդ. 12։ Բ Մն. լգ. 11։
ճ Տես Դան. ա. 3։
մ Ա Թագ. գ. 18։ Յոբ. ա. 21։ Սաղ. լթ. 9։

իմ օրերուս մէջ խաղաղութիւն ու
ապահովութիւն պիտի ըլլայ ։
20 [ժ]Ու Եզեկիային մնացորդ պատ-
մութիւնը, և անոր բոլոր զօրու-
թիւնը, ու [ի]շինած աւազանը ու
ջրմուղը, և [լ]քաղաքը բերած ջու-
րը՝ ահա Յուդայի թագաւորներուն
յիշատակաց գրքին մէջը գրուած
21 է ։ Ու [խ]Եզեկիա իր հայրերուն
հետ քնացաւ. և անոր տեղը՝
անոր որդին Մանասէն թագաւոր
եղաւ ։

Ն. Ք. Դ. Ճ. 712
Իրր 710
ժ Բ Մն. լբ. 32։
ի Նէեմ. գ. 16։
լ Բ Մն. լբ. 30։
խ Բ Մն. լբ. 33։
Իրր 698

## ԳԼ. ԻԱ

*1 Մանասէին թագաւորութիւնը. 3 անոր չափազանց կռապաշտութիւնը. 10 անոր ըրած չարութեանը պատճառով՝ Յուդայի վրայ գալու չարիքները մարգարէներուն ձեռքովը կը յայտնուին ։ 17 Ամոն անոր տեղը կը յաջորդէ ։ 19 Ամոնին չար վարմունքը ։ 23 Անիկայ իր ծառաներէն կը մեռցուի. ժողովուրդն ալ ան մարդասպանները կը մեռցընեն, ու Յովսիան թագաւոր կ'ընեն ։*

1 [ա]Մանասէ տասուերկու տարեկան
էր՝ երբոր թագաւոր եղաւ,
ու Երուսաղէմի մէջ յիսունըհինգ
տարի թագաւորութիւն ըրաւ. ու
անոր մօրը անունը Եփսիբայ էր ։
2 Եւ անիկայ՝ Տէրոջը Իսրայէլի որ-
դւոցը առջևէն վռընտած [բ]ազգե-
րուն գարշելի գործքերուն պէս՝
Տէրոջը առջևը չարութիւն ըրաւ ։
3 Ու անիկայ [գ]իր հօրը Եզեկիային
կործանած բարձր տեղուանքը նո-
րէն շինեց, ու Բահաղին սեղաններ
կանգնեց. և Աստարովթի կուռք
մը շինեց, [դ]Իսրայէլի Աքաաբ թա-
գաւորին ըրածին պէս. ու [ե]եր-
կինքին բոլոր զօրութիւններուն
երկրպագութիւն ըրաւ, և անոնց
4 ծառայութիւն ըրաւ. Ու [զ]սեղան-
ներ շինեց Տէրոջը տանը մէջ, ո-
րուն համար Տէրը ըսած էր թէ՝
[է]Իմ անունս Երուսաղէմի մէջ պի-
5 տի դնեմ ։ Եւ Տէրոջը տանը եր-
կու գաւիթներուն մէջ՝ երկինքի
բոլոր զօրութիւններուն սեղաններ
6 շինեց ։ [ը]Ու իր տղան կրակէ ան-
ցուց. և [թ]գուշակութիւն ու հմա-
յութիւն կ'ընէր, և վհուկներ ու
նշանագէտներ [*]ունէր. և Տէրո-
ջը առջևը շատ չարութիւն ըրաւ,
7 ու զանիկայ բարկացուց ։ Եւ իր
շինած Աստարովթի կուռքը ան
տանը մէջ դրաւ, որուն համար
Տէրը՝ Դաւիթին ու անոր որդւոյն
Սողոմոնին ըսեր էր [ժ]Իմ անունս
աս տանը մէջ, ու Իսրայէլի բոլոր
ցեղերէն իմ ընտրած Երուսաղէմիս
8 մէջ պիտի դնեմ յաւիտեան. [ի]Եւ
Իսրայէլին ոտքը մէյմըն ալ պիտի
չշարժեմ ատ երկրէն, որն որ ա-
նոնց հայրերուն տուի. միայն թէ
անոնք իմ ամէն պատուիրանքներս
ու իմ Մովսէս ծառայիս անոնց

Իրր 698
ա Բ Մն. լգ. 1, &c.
բ Գլ. ժզ. 3։
գ Գլ. ժը. 4։
դ Գ Թագ. ժզ. 32, 33։
ե Բ Օր. դ. 19։ ժէ. 3։ Գլ. ժէ. 16։
զ Երեմ. լբ. 34։
է Բ Թագ. է. 13։ Գ Թագ. ը. 29։ թ. 3։
ը Ղև. ժը. 21։ ի. 2։ Գլ. ժզ. 3։ ժէ. 17։
թ Ղև. ժթ. 26, 31։ Գլ. ժէ. 17։ Բ Օր. ժը. 10, 11.
* Եբր. կ'ընէր.
ժ Բ Թագ. է. 13։ Գ Թագ. ը. 29։ թ. 3։ Գլ. իգ. 27։ Սաղ. ճլբ. 13, 14։ Երեմ. լբ. 34։
ի Բ Թագ. է. 10։

պատուիրած բոլոր օրէնքը զգու-
9 շութեամբ 'ի գործ դնեն ։ Բայց
անոնք մտիկ չըրին. ու Մանասէ
այնպէս [լ]մոլորցուց զանոնք, որ
Տէրոջը Իսրայէլի որդւոցը առջևէն
կորսընցուցած ազգերէն աւելի չա-
րութիւն ըրին ։
10 Եւ Տէրը իր ծառաներուն՝ մար-
գարէներուն ձեռքովը խօսեցաւ՝
11 ըսելով. [խ]Որովհետև Յուդայի Մա-
նասէ թագաւորը աս գարշութիւն-
ները ընելով՝ [ծ]իրմէ առաջ եղող
Ամորհացւոց բոլոր ըրածներէն ա-
ւելի չարութիւն ըրաւ, ու իր
կուռքերովը [կ]Յուդային ալ մեղք
12 գործել տուաւ, Անոր համար Իս-
րայէլին Տէր Աստուածը այսպէս
կ'ըսէ. Ահա ես Երուսաղէմի վրայ՝
ու Յուդայի վրայ անանկ չարիք մը
պիտի բերեմ, որ ամէն լսողին եր-
13 կու [հ]ականջը պիտի խօսի ։ Ու Ե-
րուսաղէմին վրայ [ձ]Սամարիային
լարը՝ և Աքաաբին տանը գնտակը
պիտի երկընցընեմ. ու Երուսաղէ-
մը պիտի սրբեմ, ինչպէս որ մէկը
աման մը կը սրբէ, ու սրբելէն ետև
14 երեսն 'ի վար կը դարձընէ ։ Եւ իմ
ժառանգութեանս մնացորդը պիտի
մերժեմ, ու զանոնք իրենց թշնա-
միներուն ձեռքը պիտի տամ. ու
անոնք իրենց բոլոր թշնամիներուն
աւար ու յափշտակութիւն պիտի
15 ըլլան. Որովհետև իմ առջևս չա-
րութիւն ըրին, ու իրենց հայրերուն
Եգիպտոսէն ելած օրէն մինչև աս
16 օրս զիս բարկացուցին ։ [ղ]Նաև Մա-
նասէ խիստ շատ անմեղ արիւն
թափեց, այնպէս որ Երուսաղէմը
ծայրէ 'ի ծայր լեցուց. բաց 'ի ան
իր մեղքէն՝ որով Տէրոջը առջևը
Յուդային մեղանչելուն ու չարու-
թիւն ընելուն պատճառ եղաւ ։
17 Եւ [ճ]Մանասէին մնացորդ պատ-
մութիւնը, ու ամէն ըրածը, և ա-
նոր գործած մեղքը՝ ահա Յուդայի
թագաւորներուն յիշատակաց գըր-
18 քին մէջը գրուած է ։ Ու [մ]Մանասէ
իր հայրերուն հետ քնացաւ, և իր
տանը պարտէզին մէջ՝ Ոզայի պար-
տէզին մէջը թաղուեցաւ. ու անոր
տեղը՝ անոր որդին Ամոնը թագա-
ւոր եղաւ ։
19 [յ]Ամոն քսանուերկու տարեկան
էր՝ երբոր թագաւոր եղաւ, ու
Երուսաղէմի մէջ երկու տարի թա-
գաւորութիւն ըրաւ. ու անոր մօ-
րը անունը Մեսողոմիթ էր, — Ե-
20 տեբացի Արուսին աղջիկն էր ։ Եւ
անիկայ [ն]իր հօրը Մանասէին ըրա-
ծին պէս Տէրոջը առջևը չարու-
21 թիւն ըրաւ. Ու իր հօրը քալած
բոլոր ճամբուն մէջը քալեց. և իր
հօրը պաշտած կուռքերը պաշտեց.

Ն. Ք. Դ. Ճ.
Իրր 698
լ Առակ. իթ. 12։
խ Գլ. իգ. 26, 27։ իդ. 3, 4։ Երեմ. ժե. 4։
ծ Գ Թագ. իա. 26։
կ Հմր 9։
հ Ա Թագ. գ. 11։ Երեմ. ժթ. 3։
ձ Տես Ես. լդ. 11։ Ողբ. բ. 8։ Ամով. է. 7, 8։
ղ Գլ. իդ. 4։
ճ Բ Մն. լգ. 11—19։
մ Բ Մն. լգ. 20։
643
յ Բ Մն. լգ. 21—23։
ն Հմր 2. &c.

Ն. Բ. Գք. 643
Նգ Թագ. Ժա. 33.

ու անոնց երկրպագութիւն ըրաւ .
22 Եւ իր հայրերուն Տէր Աստուածը
թողուց , ու Տէրոջը ճամբուն մէջը
չքալեց ։

641
Բ Մն. ԼԳ. 24, 25.

23 Եւ Ամոնին ծառաները անոր
դէմ դաւաճանութիւն ըրին , ու
թագաւորը իր տանը մէջ մեռցու-
24 ցին ։ Ու երկրին ժողովուրդը՝ Ամոն
թագաւորին դէմ դաւաճանու-
թիւն ընողներուն ամէնը մեռցու-
ցին . ու երկրին ժողովուրդը անոր
որդին Յովսիան՝ անոր տեղը թա-
գաւոր դրին ։
25 Եւ Ամոնին ըրած գործքերուն
մնացորդ պատմութիւնը՝ ահա
Յուդայի թագաւորներուն յիշա-
26 տակաց գրքին մէջը գրուած է ։ Ու
զանիկայ Ոզայի պարտէզը՝ իր գե-
րեզմանին մէջը թաղեցին . և անոր
տեղը՝ անոր որդին Յովսիան թա-
գաւոր եղաւ ։

## ԳԼ. ԻԲ

1 Յովսիային բարի թագաւորութիւնը ։ 3 Յովսիա՝ տաճարին նորոգութեանը հոգ կը տանի . 8 Քեղկիա օրինաց գիրք մը գտնելով՝ Յովսիային կը խրկէ . ան ալ լուր կը խրկէ Ողդային՝ որ Տէրոջը հարցընէ . 15 Ողդա Երուսաղէմի կործանումը կը գուշակէ . բայց նաև կ'իմացընէ թէ Յովսիային կենդանութեան ատենը պիտի չըլլայ ։

641
Բ Մն. ԼԴ. 1.
Յես. ԺԵ. 39.
Բ Օր. Ե. 32.
Իբր 624
Բ Մն. ԼԴ. 8, և.
Դ Թագ. ԺԲ. 4.
Դ Թագ. ԺԲ. 9. Սաղ. ԴԳ. 10.
Դ Թագ. ԺԲ. 11, 12, 14.
Դ Թագ. ԺԲ. 15.

1 Յովսիա ութը տարեկան էր՝
երբոր թագաւոր եղաւ , ու
Երուսաղէմի մէջ երեսունմէկ
տարի թագաւորութիւն ըրաւ .
և անոր մօրը անունը Յեդի-
դա էր , Բասկաթացի Ա-
2 դայիային աղջիկն էր ։ Եւ անիկայ
Տէրոջը առջևը ուղղութիւն ը-
րաւ , ու իր հօրը Դաւիթին
բոլոր ճամբուն մէջը քալեց , ու
աջ կամ ձախ կողմը չխոտորեցաւ ։
3 Եւ Յովսիա թագաւորին տասն-
ութերորդ տարին՝ թագաւորը
Մեսուղամի որդւոյն Եսելիային որ-
դին Սափան դպիրը Տէրոջը տունը
4 խրկեց՝ ըսելով . Քեղկիա քահանա-
յապետին գնա . ու անիկայ Տէ-
րոջը տունը բերուած ստակը թող
համրէ , որն որ դրան պահապան-
5 ները ժողովուրդէն ժողվեցին . Ու
զանիկայ Տէրոջը տանը գործին վը-
րայ դրուած բանուորներուն տան ,
ու տանը փլած տեղուանքը շինելու
համար՝ Տէրոջը տանը մէջի գործը
6 ընողներուն տան զանիկայ , հիւ-
սներուն , շինողներուն ու որմնադիր-
ներուն . նաև փայտ ու տաշուած
քարեր ծախու առնեն՝ տունը նո-
7 րոգելու համար ։ Բայց անոնց
ձեռքը տրուած ստակին հաշիւը
չէին հարցըներ . քանզի անոնք հա-
ւատարմութեամբ կ'աշխատէին ։
8 Եւ Քեղկիա քահանայապետը Սա-
փան դպիրին ըսաւ . Տէրոջը տա-
նը մէջ օրինաց գիրք մը գտայ .
ու Քեղկիա ան գիրքը Սափանին
9 տուաւ . ու զանիկայ կարդաց ։ Եւ
Սափան դպիրը թագաւորին եկաւ ,
ու թագաւորին պատասխան բե-
րաւ , ու ըսաւ . Քու ծառաներդ
տանը մէջ գտնուած ստակը հանե-
ցին , ու Տէրոջը տանը գործին վը-
րայ դրուած բանուորներուն ձեռքը
10 տուին ։ Եւ Սափան դպիրը թա-
գաւորին պատմեց՝ ու ըսաւ . Քեղ-
կիա քահանան ինծի մէկ գիրք մը
տուաւ . և Սափան զանիկայ թա-
11 գաւորին առջևը կարդաց ։ Ու
թագաւորը օրինաց գրքին խօսքերը
լսածին պէս՝ իր հանդերձները պատ-
12 ռեց ։ Եւ թագաւորը Քեղկիա քա-
հանային , ու Սափանի որդւոյն
Աքիկամին , ու Միքիայի որդւոյն
Աքբորին , և Սափան դպիրին , ու
թագաւորի ծառային՝ Ասայիային
13 պատուիրեց ու ըսաւ . Գացէ՛ք՝
ինծի համար , ու ժողովուրդին
համար , ու բոլոր Յուդային համար՝
աս գտնուած գրքին խօսքերուն վը-
րայով Տէրոջը հարցուցէք . քանզի
մեր վրայ Տէրոջը մեծ բարկութիւ-
նը բորբոքեր է . որովհետև մեր հայ-
րերը աս գրքին խօսքերուն հնազան-
դութիւն չըրին , ու մեզի համար
ամէն գրուած բաները 'ի գործ չդը-
րին ։
14 Ու Քեղկիա քահանան , և Աքի-
կամը , ու Աքբորը , և Սափանը ,
ու Ասայիան , Արասի որդւոյն Թեկ-
ուայի որդւոյն Սեղղում հանդեր-
ձապետին կնկանը Ողդա մարգարէին
գացին . ու անիկայ Երուսաղէմը՝
Մասնայի մէջ կը բնակէր . ու
15 անոր հետ խօսեցան ։ Եւ անիկայ
ըսաւ անոնց . Իսրայէլին Տէր Աս-
տուածը այսպէս կ'ըսէ . Ձեզ ինծի
16 խրկող մարդուն ասանկ ըսէք . Տէ-
րը այսպէս կ'ըսէ . Ահա ես աս
տեղիս ու անոր բնակիչներուն վրայ
չարիք պիտի բերեմ , այսինքն Յու-
դայի թագաւորին կարդացած գըր-
17 քին ամէն խօսքերը . Որովհետև
զիս թողուցին , և ուրիշ աստուած-
ներու խունկ ծխեցին , որ իրենց
ձեռքերուն բոլոր գործքերովը զիս
բարկացընեն . ուստի աս տեղիս
վրայ իմ բարկութիւնս պիտի բոր-
18 բոքի , ու պիտի չմարի ։ Բայց
Տէրոջը հարցընելու համար ձեզ
խրկող Յուդայի թագաւորին ա-
սանկ ըսէք . Իսրայէլի Տէր Աս-
տուածը այսպէս կ'ըսէ՝ լսած խօս-
19 քերուդ համար . Որովհետև քու
սիրտդ կակղացաւ , ու Տէրոջը առ-
ջևը խոնարհեցար , երբոր լսեցիր
իմ խօսքս , թէ աս տեղիս վրայ ու

Ն. Գ. Գք. 624
Բ Օր. ԼԱ. 24, և. Բ Մն. ԼԴ. 14, և.
Բ Մն. ԼԴ. 20 Աքբովրի
Բ Օր. ԻԹ. 27.
Բ Մն. ԼԴ. 22.
Կամ Երկրորդ մասին
Բ Օր. ԻԹ. 27. Դան. Թ. 11, 12, 13, 14.
Բ Օր. ԻԹ. 25, 26, 27.
Բ Մն. ԼԴ. 26, և.
Սաղ. ԾԱ. 17. Ես. ԿԶ. 15.
Գ Թագ. ԻԱ. 29.

Ն. Ք. Գ. Ք.
624

ա Ղև. իզ. 31, 32։
բ Երեմ. իզ. 6։ խդ. 22։
գ Սաղ. լէ. 37։ Ես. ծէ. 1, 2։

անոր բնակիչներուն վրայ աւե-
րում ու անէծք պիտի ըլլայ, և
քու հանդերձներդ պատռեցիր, ու
իմ առջևս լացիր. ես ալ լսեցի,
20 կ'ըսէ Տէրը։ Անոր համար ահա ես
քեզ քու հայրերուդ պիտի խառ-
նեմ, ու գխաղաղութեամբ քու
գերեզմանիդ մէջ պիտի ամփո-
փուիս. և աս տեղիս վրայ իմ բե-
րելու բոլոր չարիքներս՝ քու աչ-
քերդ պիտի չտեսնեն. Ու անոնք
թագաւորին պատասխան բերին։

## ԳԼ. ԻԳ

1 Յովսիա հանդիսաւոր ժողովքի մը մէջ՝ անգիր-
քը կարդալ կու տայ։ 3 Անիկայ Տէրոջը ուխտը
կը նորոգէ. 4 կռապաշտութիւնը կը կործա-
նէ. 15 Բեթէլի սեղանին վրայ մեռելոց ոսկոր-
ներ կ'այրէ, ինչպէս որ մարգարէութիւն ե-
ղած էր։ 21 Յովսիա խիստ հանդիսաւոր
զատիկ մը կ'ընէ. 24 կախարդները ու բոլոր
պղծութիւնները բնաջինջ կ'ընէ։ 26 Աստուծոյ
վերջին բարկութիւնը Յուդայի դէմ։ 29 Յով-
սիա յանդգնութեամբ Փարաւոն Նեքաւովին
վրայ երթալով՝ Մակեդդովի մէջ կը մեռցուի։
31 Յովաքազ անոր տեղը կը յաջորդէ. բայց
Փարաւոն Նեքաւով զանիկայ բանտարկելով՝
Յովակիմը թագաւոր կը նստեցնէ։ 36 Յո-
վակիմին չար վարմունքը։

ա Բ Մն. լդ. 29, 30, 31։
բ Գլ. իբ. 8։
* Եբր. ա- կանջներուն
գ Գլ. ժա. 14, 17։
դ Գլ. իա. 3, 7։

1 Ու ա թագաւորը մարդ ղրկեց. ու
Յուդային ու Երուսաղէմին բո-
լոր՝ ծերերը անոր քովը ժողվուե-
2 ցան։ Եւ թագաւորը, ու անոր
հետ Յուդայի բոլոր մարդիկները,
ու Երուսաղէմին բոլոր բնակիչնե-
րը, ու քահանաները, և մարգա-
րէները, ու պզտիկէն մինչև մեծը
բոլոր ժողովուրդը Տէրոջը տունը
ելան. և բ Տէրոջը տանը մէջ գըտ-
նուած ուխտի գրքին բոլոր խօսքե-
3 րը անոնց *առջևը կարդաց։ Եւ
թագաւորը գ սիւնին քովը կայնե-
ցաւ, ու Տէրոջը առջևը ուխտ ը-
րաւ, որ ան գրքին մէջը գրուած
ուխտին խօսքերը հաստատելու հա-
մար՝ Տէրոջը ետևէն երթայ, և ա-
նոր պատուիրանքները, ու վկայու-
թիւնները, ու կանոնները բոլոր
սրտով ու բոլոր հոգիով պահէ. և
բոլոր ժողովուրդը ուխտին հաւա-
4 նութիւն տուաւ։ Ու թագաւորը
Քեղկիա քահանայապետին, ու
երկրորդ աստիճանի քահանանե-
րուն, և դրան սպասաւորներուն
հրամայեց, որ Բահաղին համար՝
ու դ Աստարովթին համար՝ ու եր-
կինքին բոլոր զօրութիւններուն
համար շինուած գործիքներուն ա-
մէնը՝ Տէրոջը տաճարէն դուրս հա-
նեն. ու զանոնք Երուսաղէմէն
դուրս՝ Կեդրոնի դաշտավայրին մէջ
այրեց, ու անոնց մոխիրը Բեթէլ
5 տարաւ։ Եւ Յուդայի թագաւոր-
ներուն՝ Յուդայի քաղաքներուն
մէջ ու Երուսաղէմին բոլորտիքը
բարձր տեղերու վրայ դրած խունկ

Ն. Ք. Գ. Ք.
624

ե Ովս. ժ. 5։ Սոփ. ա. 4։
զ Գլ. իա. 3։
է Գլ. իա. 7։
ը Բ Մն. լդ. 4։
թ Գ Թագ. ժդ. 24։ ժե. 12։
ժ Եզեկ. ժզ. 16։
† Եբր. տու- ներ
ի Գ Թագ. ժե. 22։
լ Տես Եզեկ. խդ. 10-14։
խ Յես. ժե. 8։
ծ Ղև. ժը. 21։ բ Օր. ժը. 10։ Եզեկ. իգ. 37, 39։
կ Ես. լ. 33։ Երեմ. է. 31։ ժթ. 6, 11—13։
հ Երեմ. ժթ. 13։ Սոփ. ա. 5։
ձ Գլ. իա. 5։
ղ Գ Թագ. ժա. 7։
ճ Ել. իգ. 24։ բ Օր. է. 5, 25։
մ Գ Թագ. ժբ. 28. 33։

ծխող եքուրմերը, և Բահաղին, ու
արեգակին, ու լուսնին, և զօդ-
ուակներու կենդանակերպներուն, ու
երկինքին բոլոր զօրութիւննե-
րուն խունկ ծխողները վերցուց.
6 Եւ ը Աստարովթի կուռքը Տէրոջը
տունէն՝ Երուսաղէմին դուրսը Կեդ-
րոն հեղեղատը հանեց, ու զանիկայ
Կեդրոն հեղեղատին մէջը այրեց,
ու ծեծեց փոշի ըրաւ, ու փոշին
ըժողովուրդին որդւոցը գերեզման-
7 ներուն վրայ ցանեց. Եւ Տէրոջը
տանը մէջ գտնուող թՍոդոմական
մեղքը գործողներուն տուները փըլ-
ցուց, ժուր որ կնիկները Աստա-
րովթին †վարագոյրներ կը գործէ-
8 ին։ Ու Յուդայի քաղաքներէն
բոլոր քահանաները Երուսաղէմ բե-
րաւ, ու ի Գաբայէն մինչև Բերսա-
բէէ՝ պղծեց ան բարձր տեղուան-
քը, որոնց մէջը քահանաները խունկ
կը ծխէին. և քաղաքի իշխանին՝
Յեսուին դրանը բերանը՝ քաղաքին
դրանը ձախ կողմը եղող դռներուն
9 բարձր տեղուանքը փլցուց։ լԲայց
բարձր տեղերուն քահանաները՝ Ե-
րուսաղէմ եղող Տէրոջը սեղանը
չէին ելլեր, խ հապա իրենց եղբայր-
10 ներուն մէջ բաղարջ կ'ուտէին։ Ու
ծԵննովմի որդւոյն ձորին մէջը եղող
կՏօփեթը պղծեց, որ մարդ մը իր
տղան կամ աղջիկը Մողոքին հա-
11 մար կրակէ չանցընէ։ Ու նաև վեր-
ցուց Տէրոջը տանը դրանը առջևէն
ան ձիերը, որ Յուդայի թագաւոր-
ները արեգակին նուիրեր էին, և
անոնք Փարուրիմ եղող Նաթան-
մելէք ներքինիին սենեակին քովն
էին. ու արեգական կառքերը կրա-
12 կով այրեց։ Եւ հԱքազին վերնա-
տանը տանիքին վրայ՝ Յուդայի
թագաւորներուն շինած սեղաննե-
րը. ու Տէրոջը տանը երկու գա-
ւիթներուն մէջ ձՄանասէին շի-
նած սեղանները՝ թագաւորը փըլ-
ցուց. ու անկէ բնաջինջ ըրաւ, և
անոնց հողը Կեդրոն հեղեղատը նե-
13 տեց։ Ու Երուսաղէմին դիմացը՝ Ա-
պականութեան լեռան աջ կողմը՝
Իսրայէլի ղՍողոմոն թագաւորին
Սիդոնացւոց գարշելիին՝ Աստա-
րովթին համար, ու Մովաբացւոց
գարշելիին՝ Քամոսին համար ու
Ամմոնի որդւոց գարշելիին՝ Մեղ-
քոմին համար շինած բարձր տե-
14 ղուանքը՝ թագաւորը պղծեց. Եւ
ճարձանները խորտակեց, ու Աս-
տարովթի կուռքերը կոտրտեց, ու
անոնց տեղը մարդու ոսկորներով
լեցուց.
15 Ու Բեթէլի սեղանն ալ, մ Իս-
րայէլին մեղանչել տուող Նաբա-
տեան Յերոբովամին շինած բարձր

տեղը՝ (ան սեղանը ու բարձր տեղն
ալ) փլցուց, և բարձր տեղը այրեց
ու փոշի դարձուց, ու Աստարովթի
16 կուռքը այրեց ։ Եւ Յովսիա դար-
ձաւ, ու հոն լեռանը վրայի գերեզ-
մանները տեսաւ, և մարդ խրկեց՝
գերեզմաններուն մէջի ոսկորները
առաւ, ու սեղանին վրայ այրելով՝
զանիկայ պղծեց, ն Տէրոջը խօսքին
համեմատ, որն որ աս բաները խօ-
սող Աստուծոյ մարդը բարձր ձայ-
17 նով խօսեր էր ։ Եւ Յովսիան ը-
սաւ. Ի՞նչ պիտի ըլլայ աս կոթո-
ղը՝ որ ես կը տեսնեմ. ու քաղաքին
մարդիկը անոր ըսին. Անիկայ ղԱս-
տուծոյ մարդուն գերեզմանն է, որ
Յուդայէն եկաւ, ու Բեթելի սե-
ղանին վրայ աս քու ըրած բաներդ
18 *խօսեցաւ ։ Եւ Յովսիան ըսաւ.
Զանիկայ թողուցէ՛ք. անոր ոս-
կորները մարդ մը տեղէն չշարժէ.
ուստի անոր ոսկորները ոՍամա-
րիայէն եկող մարգարէին ոսկորնե-
19 րուն հետ թող տուին ։ Ու Յով-
սիա՝ ղՍամարիայի քաղաքներուն
մէջի բոլոր բարձր տեղերուն տու-
ներն ալ վերցուց, որ Իսրայէլի
թագաւորները զանոնք շինելով՝
Տէրը բարկացուցեր էին. ու Բեթե-
լի մէջ բոլոր ըրածին պէս՝ անոնց
20 ալ ըրաւ ։ Եւ հոն գտնուած պբար-
ձր տեղերուն բոլոր քուրմերը սե-
ղաններուն վրայ ջմորթեց, ու ա-
նոնց վրայ ռ մարդու ոսկորներ այ-
րեց. ետքը Երուսաղէմ դարձաւ ։
21 Եւ թագաւորը բոլոր ժողովուր-
դին պատուիրեց՝ ըսելով. ս Ձեր
Տէր Աստուծոյն զատիկ ըրէք,
վինչպէս որ աս ուխտի գրքին մէջը
22 գրուած է ։ Քանզի Իսրայէլը դա-
տող դատաւորներուն օրերէն 'ի
վեր՝ և Իսրայէլի թագաւորներուն
ու Յուդայի թագաւորներուն բոլոր
օրերն ալ՝ տ աս զատկին պէս եղած
23 չէր. Բայց Յովսիա թագաւորին
տասնըութերորդ տարին աս զա-
տիկը Տէրոջը եղաւ Երուսաղէմի
մէջ ։
24 Ու նաև Յովսիա՝ ր վհուկները,
նշանագէտները, ու ց թերափիմնե-
րը, ու կուռքերը, և Յուդայի երկ-
րին մէջ՝ ու Երուսաղէմի մէջ երև-
ցած բոլոր գարշութիւնները վեր-
ցուց, որ Քեղկիա քահանային՝
Տէրոջը տունը գտած գրքին մէջը
գրուած ւ օրէնքին խօսքերը հաս-
25 տատէ ։ փ Եւ անկէ առաջ անոր
նման թագաւոր մը չեղաւ, որ իր
բոլոր սրտովը՝ ու բոլոր հոգիովը՝
ու բոլոր զօրութիւնովը Տէրոջը
դառնայ՝ Մովսէսին բոլոր օրէնքին
համեմատ. ոչ ալ անկէ ետքը անոր
26 նմանը ելաւ ։ Բայց Տէրը՝ Յուդա-

Ն․ Ք․ ՂՔ․ 624

Ն Գ Թագ․ ժգ․ 2։
Ղ Գ Թագ․ ժգ․ 1, 30։
* Եբր․ կանչեց։
Ո Գ Թագ․ ժգ․ 31։
Ղ Տն․ բՄն․ լդ․ 6, 7։
Պ Գ Թագ․ ժգ․ 2։
Ջ Ել․ իբ․ 20։ Գ Թագ․ ժը․ 40։ Գլ․ ժա․ 18։
Ռ բՄն․ լդ․ 5։
Ս բՄն․ լե․ 1։
Վ Ել․ ժբ․ 3։ Ղև․ իգ․ 5։ Թու․ թ․ 2։ բ Օր․ ժզ․ 2։
Տ բ Մն․ լե․ 18, 19։
իբր 623
Ր Գլ․ իա․ 6։ Ց Ծն․ լա․ 19։
Ւ Ղև․ ժթ․ 31։ ի․ 27։ բ Օր․ ժը․ 11։
Փ Գլ․ ժը․ 5։

յի վրայ բորբոքած իր մեծ ու սաս-
տիկ բարկութենէն ետ չդարձաւ
ք ան բոլոր † չար գործքերուն" հա-
մար, որոնցմով Մանասէ զանիկայ
27 բարկացուցեր էր ։ Եւ Տէրը ըսաւ.
Յուդան ալ իմ երեսէս պիտի ձը-
գեմ, ինչպէս որ օ Իսրայէլը ձգեցի.
ու պիտի մերժեմ աս քաղաքը՝ իմ
ընտրած Երուսաղէմս, ու աս տու-
նը՝ որուն համար ըսի թէ՝ ‡ Իմ ա-
նունս հոն ըլլայ ։
28 Եւ Յովսիային մնացորդ պատ-
մութիւնը, ու անոր բոլոր ըրածը՝
ահա Յուդայի թագաւորներուն յի-
շատակաց գրքին մէջը գրուած է ։
29 ա Անոր օրերը Եգիպտոսի թագա-
ւորը Փարաւոն Նեքաւով՝ Ասորես-
տանի թագաւորին վրայ Եփրատ
գետը ելաւ. ու Յովսիա թագա-
ւորը անոր դէմ ելլելու գնաց. ու
անիկայ Յովսիան բ տեսածին պէս՝
զանիկայ սպաննեց գ Մակեդդովի
30 մէջ ։ դ Եւ անոր ծառաները անոր
մարմինը Մակեդդովէն կառքով Ե-
րուսաղէմ բերին, ու զանիկայ իր
գերեզմանին մէջը թաղեցին. ու
ե երկրին ժողովուրդը Յովսիային
որդին Յովաքազը առին ու օծեցին,
և զանիկայ իր հօրը տեղը թագա-
ւոր դրին ։
31 զ Յովաքազ քսանըերեք տարե-
կան էր՝ երբոր թագաւոր եղաւ,
ու Երուսաղէմի մէջ երեք ամիս թա-
գաւորութիւն ըրաւ. և անոր մօրը
անունը է Ամիտաղ էր, ը Լեբնացի
32 Երեմիային աղջիկն էր ։ Եւ անի-
կայ իր հայրերուն բոլոր ըրածին
պէս՝ Տէրոջը առջևը չարութիւն ը-
33 րաւ ։ Ու Փարաւոն Նեքաւով զա-
նիկայ Եմաթի երկիրը՝ ը Ռեբղայի
մէջ բանտարկեց, որ Երուսաղէմի
մէջ թագաւորութիւն չընէ. ու
թ երկրին վրայ՝ հարիւր տաղանդ ար-
ծաթ, ու տաղանդ մը ոսկի հարկ
34 դրաւ ։ Եւ ժ Փարաւոն Նեքաւով
Յովսիային որդին Եղիակիմը՝ անոր
հօրը Յովսիային տեղը թագաւոր
դրաւ, ու ի անոր անունը փոխեց՝
ղՅովակիմ դրաւ. լ բայց Յովա-
քազը առաւ Եգիպտոս տարաւ.
35 ու անիկայ հոն մեռաւ ։ Եւ Յո-
վակիմ ծ ան արծաթը ու ոսկին
Փարաւոնին տուաւ. բայց երկրին
վրայ հարկ դրաւ, ան արծաթը
Փարաւոնին պատուիրածին պէս
տալու համար. խ երկրին ժողո-
վուրդէն՝ ամէն մարդուն վրայ
դրուած հարկին համեմատ՝ արծա-
թը ու ոսկին առաւ, որ Փարա-
ւոն Նեքաւովին տայ ։
36 կ Երբոր Յովակիմը թագաւոր ե-
ղաւ՝ քսանըհինգ տարեկան էր,
ու Երուսաղէմի մէջ տասնըմէկ

Ն․ Ք․ ՂՔ․ իբր 623

Ք Գլ․ իա․ 11, 12։ իգ․ 3, 4։ Երեմ․ ժե․ 4։
† Եբր․ գայրացութիւններուն
Օ Գլ․ ժէ․ 18, 20։ ժը․ 11։ իա․ 13։
‡ Գ Թագ․ ը․ 29։ թ․ 3։ Գլ․ իա․ 4, 7։
610
Ա բՄն․ լե․ 20։
Բ Գլ․ ժգ․ 8։ Գ Զաք․ ժբ․ 11։
Դ բՄն․ լե․ 24։
Ե բՄն․ լզ․ 1։
Զ Տն․ ամն․ գ․ 15։ Երեմ․ իբ․ 11։
Է Գլ․ իդ․ 18։
Ը Գլ․ իե․ 6։ Երեմ․ ծբ․ 27։
Թ բՄն․ լզ․ 3։
Ժ բՄն․ լզ․ 4։
Ի Տն․ գլ․ իգ․ 17։ Դան․ ա․ 7։
Լ Մատ․ ա․ 11։
Խ Երեմ․ իբ․ 11, 12։ Եզեկ․ ժթ․ 3, 4։
Ծ Հմր 33։
Կ բՄն․ լզ․ 5։

Ն. Ք. ՎՔ.
610

տարի Թագաւորութիւն ըրաւ . և
անոր մօրը անունը Զաբիդա էր ,
[ա] Ռումացի Փադայիային աղջիկն
37 էր ։ Եւ անիկայ իր հայրերուն
բոլոր ըրածին պէս՝ Տէրոջը առջևը
չարութիւն ըրաւ ։

## ԳԼ. ԻԴ

1 Յովակիմ նախ Նաբուգոդոնոսորին կը հնազանդի . ետքը անոր դէմ ապստամբելով՝ ինքը իր կործանմանը պատճառ կ'ըլլայ ։ 5 Յովաքին անոր տեղը կը յաջորդէ ։ 7 Եգիպտոսի Թագաւորը՝ Բաբիլոնի Թագաւորէն կը յաղթուի ։ 8 Յովաքինին չար վարմունքը ։ 10 Երուսաղէմ կ'առնուի , ու անոր բնակիչները Բաբիլոն գերի կը տարուին ։ 17 Սեդեկիա Թագաւոր կ'ըլլայ , ու չար կերպով կը Թագաւորէ մինչև Յուդայի վերջին կործանումը ։

607
606
603
600
[ա] Բ Մն. ԼԶ. 6 ։ Երեմ. ԻԵ. 1. 9 ։ Դան. Ա. 1 ։
[բ] Եզեկ. ԺԹ. 8 ։ Երեմ. ԻԵ. 9 ։ ԼԵ. 28 ։
[գ] Գլ. Ի. 17 ։ ԻԱ. 12, 13. 14 ։ ԻԳ. 27 ։
[դ] Գլ. ԻԱ. 2, 11 ։ ԻԳ. 26 ։
[ե] Գլ. ԻԱ. 16 ։

1 [ա] Անոր օրերը՝ Բաբիլոնի Նաբու-
գոդոնոսոր Թագաւորը ելաւ .
ու Յովակիմ իրեք տարի անոր ծա-
ռայ եղաւ . ու ետքը դարձաւ՝ անոր
2 դէմ ապստամբեցաւ ։ [բ] Եւ Տէրը
անոր վրայ Քաղդէացւոց գունդե-
րը , ու Ասորւոց գունդերը , և Մո-
վաբացւոց գունդերը , ու Ամմոնի
որդւոց գունդերը խրկեց . զանոնք
Յուդայի վրայ խրկեց , որ զանիկայ
կործանէ [գ] Տէրոջը խօսքին համե-
մատ՝ որն որ իր ծառաներուն մար-
գարէներուն ձեռքովը խօսեր էր ։
3 Իրաւցընէ ասիկայ Տէրոջը հրամա-
նովը եղաւ Յուդային , որ զանիկայ
իր առջևէն մերժէ՝ [դ] Մանասէին
ըրած բոլոր մեղքերուն համար ,
4 [ե] Ու նաև անոր Թափած անմեղ ա-
րիւնին համար . քանզի Երուսա-
ղէմը անմեղ արիւնով լեցուց . ու
Տէրը չուզեց որ ներէ ։
5 Եւ Յովակիմին մնացորդ պատ-
մութիւնը , ու անոր բոլոր ըրածը՝
ահա Յուդայի Թագաւորներուն յի-
շատակաց գրքին մէջը գրուած է ։
6 [զ] Ու Յովակիմ իր հայրերուն հետ
քնացաւ . և անոր տեղը՝ անոր որ-
դին *Յովաքինը Թագաւոր եղաւ ։
7 Ու [է] Եգիպտոսի Թագաւորը ան-
կէ ետքը մէյ մըն ալ իր երկրէն չե-
լաւ . քանզի [ը] Բաբիլոնի Թագա-
ւորը Եգիպտոսի հեղեղատէն մինչև
Եփրատ գետը՝ Եգիպտոսի Թագա-
ւորին ամէն ունեցածը առեր էր ։
8 [թ] Յովաքին տասնութը տարե-
կան էր՝ երբոր Թագաւոր եղաւ , ու
Երուսաղէմի մէջ իրեք ամիս Թա-
գաւորութիւն ըրաւ . և անոր մօրը
անունը Նեհուսթա էր , [ժ] Երու-
սաղէմացի Եղնաթանին աղջիկն
9 էր ։ Եւ անիկայ իր հօրը բոլոր ը-
րածին պէս՝ Տէրոջը առջևը չա-
րութիւն ըրաւ ։
10 [ժա] Ան ատենը Բաբիլոնի Նաբու-
գոդոնոսոր Թագաւորին ծառանե-
րը Երուսաղէմ ելան , ու քաղաքը

599
[զ] Տե՛ս Բ Մն. ԼԶ. 6, 8 ։ Երեմ. ԻԲ. 18, 19 ։ ԼԶ. 30 ։
[*] Ա Մն. Գ. 16 Յեքոնիա ։
[է] Տե՛ս Երեմ. ԼԷ. 5, 7 ։
[ը] Երեմ. ԽԶ. 2 ։
[թ] Բ Մն. ԼԶ. 9 ։
[ժ] Դան. Ա. 1 ։

11 պաշարուեցաւ ։ Եւ Բաբիլոնի
Նաբուգոդոնոսոր Թագաւորը քա-
ղաքին վրայ եկաւ , երբոր անոր
ծառաները զանիկայ պաշարեր
12 էին ։ [ժա] Ու Յուդայի Թագաւորը
Յովաքին՝ իր մօրը ու ծառաներուն
և իշխաններուն ու ներքինիներուն
հետ՝ Բաբիլոնի Թագաւորին ե-
լաւ . [ժբ] Ու Բաբիլոնի Թագաւորը՝
[ժգ] իր Թագաւորութեանը ութե-
րորդ տարին՝ [ժդ] զանիկայ բռնեց ։
13 [ժե] Եւ անկէ Տէրոջը տանը բոլոր
գանձերը , ու Թագաւորին տանը
գանձերը հանեց . ու [ժզ] կոտրտեց ան
ամէն ոսկեղէն անօթները , որոնք
Իսրայէլի Սողոմոն Թագաւորը Տէ-
րոջը տաճարին համար շիներ էր՝
14 [ժէ] Տէրոջը ըսածին համեմատ ։ Եւ
[ժը] բոլոր Երուսաղէմը , ու ամէն իշ-
խանները , և ամէն զօրաւոր մար-
դիկները , [ժթ] տասը հազար գերի , ու
[ի] ամէն հիւսերը ու դարբինները
քշեց տարաւ . երկրին ժողովրդոցը
[իա] աղքատներէն 'ի զատ մարդ մը
15 չմնաց ։ Եւ [իբ] Յովաքինը Բաբիլոն
փոխադրեց . ու Թագաւորին մայ-
րը , ու Թագաւորին կնիկները , և
անոր ներքինիները , ու երկրին զօ-
րաւորները Երուսաղէմէն Բաբիլոն
16 գերի տարաւ ։ Եւ [իգ] բոլոր զօրա-
ւոր մարդիկը եօթը հազար մարդ ,
ու հազար հիւս ու դարբին , որոնց
ամէնն ալ պատերազմող կտրիճներ
էին , Բաբիլոնի Թագաւորը զա-
17 նոնք Բաբիլոն գերի տարաւ ։ Եւ
[իդ] Բաբիլոնի Թագաւորը անոր տեղը
[իե] անոր հօրեղբայրը Մաթանիան
Թագաւոր դրաւ , ու [իզ] անոր անու-
նը Սեդեկիայի փոխեց ։
18 [իէ] Սեդեկիա քսանումէկ տարեկան
էր՝ երբոր Թագաւոր եղաւ , ու Ե-
րուսաղէմի մէջ տասնումէկ տարի
Թագաւորութիւն ըրաւ . և անոր
մօրը անունը [իը] Ամիտաղ էր , [իթ]
Լեբնացի Երեմիային աղջիկն էր ։
19 [լ] Եւ անիկայ Յովակիմին բոլոր ըրա-
ծին պէս՝ Տէրոջը առջևը չարու-
20 թիւն ըրաւ ։ Քանզի Տէրոջը բար-
կութիւնը Երուսաղէմին ու Յու-
դային վրայ էր , մինչև որ զանոնք
իր երեսէն ձգէ . անոր համար [լա] Սե-
դեկիա՝ Բաբիլոնի Թագաւորէն
ապստամբեցաւ ։

Ն. Ք. ՎՔ.
599
[ժա] Երեմ. ԻԴ. 1 ։ ԻԹ. 1, 2 ։ Եզեկ. ԺԷ. 12 ։
[ժբ] Երեմ. ԻԵ. 1 ։
[ժգ] Տե՛ս Երեմ. ԾԲ. 28 ։
[ժդ] Տե՛ս Գլ. ԻԵ. 27 ։
[ժե] Գլ. Ի. 17 ։ Ես. ԼԹ. 6 ։
[ժզ] Տե՛ս Դան. Ե. 2, 3 ։
[ժէ] Երեմ. Ի. 5 ։
[ժը] Երեմ. ԻԴ. 1 ։
[ժթ] Տե՛ս Երեմ. ԾԲ. 28 ։
[ի] Ա Թագ. ԺԳ. 19, 22 ։
[իա] Գլ. ԻԵ. 12 ։ Երեմ. Խ. 7 ։
[իբ] Բ Մն. ԼԶ. 10 ։ Եսթ. Բ. 6 ։ Երեմ. ԻԲ. 24, ԻԸ ։
[իգ] Տե՛ս Երեմ. ԾԲ. 28 ։
[իդ] Երեմ. ԼԷ. 1 ։
[իե] Ա Մն. Գ. 15 ։ Բ Մն. ԼԶ. 10 ։
[իզ] Գլ. ԻԳ. 34 ։ Բ Մն. ԼԶ. 4 ։
[իէ] Բ Մն. ԼԶ. 11 ։ Երեմ. ԼԷ. 1 ։ ԾԲ. 1 ։
[իը] Գլ. ԻԳ. 31 ։
593
[լ] Բ Մն. ԼԶ. 12 ։
[լա] Բ Մն. ԼԶ. 13 ։ Եզեկ. ԺԷ. 15 ։

## ԳԼ. ԻԵ

1 Երուսաղէմ կը պաշարուի ։ 4 Քաղդէացիք Սեդեկիան կը բռնեն . անոր տղաքը կը սպաննեն , ու անոր աչքերը կը կուրացընեն ։ 8 Նաբուզարդան՝ քաղաքը կ'այրէ , ու աղքատ երկրագործներէն 'ի զատ՝ մէկալ մնացածները գերի կը տանի . 13 տաճարին անօթները ու գանձերը կը կողոպտէ ։ 18 Ազնուականները Ռեբղայի մէջ կը մեռցուին ։ 22 Գոդողիա՝ որ ան մնացած ժողովուրդին վրայ կուսակալ դրուեր էր , կը մեռցուի . ու ժողովուրդը Ե-

Ն. Ք. ԴՔ. 590

գիպտոս կը փախչի ։ 27 Եղմարովդաք կը բարձրացընէ Յովաքինը իր պալատին մէջ ։

1 Ու եղաւ որ՝ անոր թագաւորու-
թեանը իններորդ տարին տաս-
ներորդ ամիսը՝ ամսուն տասներորդ
օրը՝ Բաբելոնի Նաբուգոդոնոսոր
թագաւորը իր բոլոր զօրքովը Ե-
րուսաղէմի վրայ եկաւ , ու անոր
դիմացը բանակեցաւ . և անոր դէմ
շուրջանակի պատնէշներ շինեցին .
2 Ու մինչև Սեդեկիա թագաւորին
մետասաներորդ տարին՝ քաղաքը
3 պաշարման մէջ էր ։ Եւ չամսուն
իններին՝ քաղաքին մէջը սաստիկ սով
կար , ու երկրին ժողովուրդը հաց
4 չունէր . Եւ քաղաքին դուռը
ճեղքուեցաւ , ու բոլոր պատերազ-
մողները գիշերով՝ թագաւորի
պարտէզին քովը եղող երկու պա-
րըսպին մէջի դրանը ճամբայէն
փախան . ու Քաղդէացիք քաղաքին
շուրջը կեցեր էին . ու Արաբա-
5 յին դաշտին ճամբայէն գնաց ։ Եւ
Քաղդէացւոց զօրքը թագաւորին
ետևէն ինկան , ու Երիքովի դաշ-
տերուն մէջը անոր հասան . և անոր
բոլոր զօրքը անոր քովէն ցրուե-
6 ցաւ . Ու թագաւորը բռնեցին , ու
զանիկայ Ռեբղա տարին Բաբելոնի
թագաւորին , և անոր դատաստանը
7 տեսան ։ Ու Սեդեկիային տղաքը՝
իր աչքերուն առջևը մորթեցին , ու
Սեդեկիային աչքերը կուրացու-
ցին , և զինքը շղթաներով կապե-
ցին , ու Բաբելոն տարին ։
8 Եւ Բաբելոնի թագաւոր՝ Նաբու-
գոդոնոսոր թագաւորին տասն-
ուիններորդ տարին հինգերորդ ա-
միսը՝ ամսուն եօթներորդ օրը՝
Բաբելոնի թագաւորին ծառան՝
Նաբուզարդան դահճապետը Ե-
9 րուսաղէմ եկաւ , Ու Տէրոջը
տունը և թագաւորին տունը այ-
րեց , ու Երուսաղէմին բոլոր տու-
ները , ու ամէն մեծ տուները կրա-
10 կով այրեց ։ Եւ դահճապետին հե-
տը եղող Քաղդէացւոց բոլոր զօր-
քերը՝ Երուսաղէմին շրջակայ պա-
11 րիսպները փլցուցին ։ Ու քաղա-
քին մէջը մնացած ժողովուրդին
մնացորդը , ու Բաբելոնի թագաւո-
րին ինող փախստականները , ու
մնացած բազմութիւնը՝ Նաբու-
զարդան դահճապետը գերի տա-
12 րաւ ։ Եւ դահճապետը երկրին
աղքատներէն թողուց՝ այգեգործ-
ներ ու երկրագործներ ըլլալու հա-
մար ։
13 Եւ Քաղդէացիք Տէրոջը տանը
մէջ եղող պղնձէ սիւները ու մե-
քենովթները , ու Տէրոջը տանը մէջ
եղող պղնձէ ծովը կոտր կոտր ը-
րին , ու անոնց պղինձը Բաբելոն
14 տարին ։ Եւ թաղարները , ու
թիակները , և բազմակալները , ու
խնկամանները , ու պաշտօնի համար
գործածուած բոլոր պղնձէ անօթ-
15 ները առին ։ Եւ դահճապետը *ոս-
կիէ ու արծաթէ բուրվառները ու
16 կոնքերը առաւ" . Նաև Սողոմոնին՝
Տէրոջը տանը համար շինած երկու
սիւները , մէկ ծովը , ու մեքենովթ-
ները . բոլոր աս գործիքներուն
17 պղինձը կշիռքի չէր գար ։ Մէկ
սիւնին բարձրութիւնը տասնուու-
թը կանգուն էր , և անոր վրայ
պղնձէ խոյակ կար . ու խոյակին
բարձրութիւնը իրեք կանգուն էր .
և խոյակին վրայ շուրջանակի ցան-
ցակերպ զարդ ու նուռեր կային ,
ամէնն ալ պղնձէ էին . ու մէկալ
սիւնն ալ ցանցակերպ զարդով այն-
պէս էր ։
18 Եւ դահճապետը առաջին քա-
հանան Սարայիան՝ ու երկրորդ
քահանան Սոփոնիան՝ ու իրեք
19 դռնապանները առաւ . Եւ քաղա-
քէն մէկ ներքինի մը առաւ , որ անի-
կայ պատերազմող մարդիկներուն
զօրագլուխն էր . ու թագաւորին
†առջևը կայնողներէն" քաղաքին
մէջը գտնուած հինգ մարդ , ու
երկրին ժողովուրդը զինուորու-
թեան գրող՝ զօրքին մեծ գրագիրը ,
և քաղաքին մէջը գտնուած երկրին
ժողովուրդէն վաթսուն մարդ ա-
20 ռաւ ։ Ու Նաբուզարդան դահ-
ճապետը զանոնք առաւ , ու Բա-
բիլոնի թագաւորին՝ Ռեբղա տա-
21 րաւ ։ Եւ Բաբիլոնի թագաւորը
զանոնք զարկաւ , ու Եմաթի երկ-
րին Ռեբղային մէջ զանոնք մեռ-
ցուց ։ Այսպէս Յուդան իր երկ-
22 րէն գերի տարուեցաւ ։ Բայց
Յուդայի երկրին մէջը մնացած ժո-
ղովուրդը՝ որ Բաբիլոնի Նաբուգո-
դոնոսոր թագաւորը հոն թողուցեր
էր , անոնց վրայ Սափանեան Աքի-
կամին որդին Գոդողիան կուսակալ
դրաւ ։
23 Եւ զօրաց բոլոր իշխանները ի-
րենց մարդիկներովը երբոր լսեցին
որ Բաբիլոնի թագաւորը Գոդողիան
կուսակալ ըրեր է , Գոդողիային՝
Մասփա եկան . այսինքն Նաթա-
նիայի որդին Իսմայէլը , Կարէի որ-
դին Յօհանանը , ու Թանհումեթի
որդին Նետոփաթացի Սարայիան ,
ու Մաքաթիի որդին Յեզոնիան ,
թէ իրենք և թէ իրենց մարդիկ-
24 ները ։ Ու Գոդողիա անոնց՝ ու ա-
նոնց մարդիկներուն երդում ըրաւ ,
ու անոնց ըսաւ . Քաղդէայինե-
րուն ‡ծառայութիւն ընելէն" մի՛
վախնաք . ու երկրիս մէջ բնակե-
ցէք , և Բաբիլոնի թագաւորին

ա բ Մն. լզ. 17 ։ Երեմ. լզ. 2 ։ լթ. 1 ։ ծբ. 4 , 5 ։ Եզեկ. իդ. 1 ։

588

բ Երեմ. լթ. 2 ։ ծբ. 6 ։

գ Երեմ. լթ. 2 ։ ծբ. 7 ։ Ա. ։

դ Երեմ. լթ. 4—7 ։ ծբ. 7 ։ Եզեկ. ժբ. 12 ։

ե Գլ. իգ. 33 ։ Երեմ. ծբ. 9 ։

զ Երեմ. լթ. 7 ։ Եզեկ. ժբ. 13 ։

է Տես գլ. իդ. 12 ։ Հմմտ 27 ։

ը Տես Երեմ. ծբ. 12-14 ։

թ Երեմ. լթ. 9 ։

ժ բ Մն. լզ. 19 ։ Սաղ. ՀԹ. 1 ։

ի Երեմ. լթ. 8 ։ Ամով. բ. 5 ։

լ Նեեմ. ա. 3 ։ Երեմ. ծբ. 14 ։

խ Երեմ. լթ. 9 ։ ծբ. 15 ։

ծ Գլ. իդ. 14 ։ Երեմ. լթ. 10 ։ խ. 7 ։ ծբ. 16 ։

կ Գլ. ի. 17 ։ Երեմ. իէ. 19 , 22 ։ ծբ. 17 , Ա. ։

հ Գ Թագ. է. 15 ։

ձ Գ Թագ. է. 27 ։

ղ Գ Թագ. է. 23 ։

Ն. Ք. ԴՔ. 588

ճ Եւ. իե. 3 ։ Գ Թագ. է. 45 , 50 ։

* Կամ՝ բուրվառները ու կոնքերը առաւ , ինչ որ ոսկիէ էր՝ ոսկի , ու ինչ որ արծաթէ էր՝ արծաթ .

մ Գ Թագ. է. 47 ։

յ Գ Թագ. է. 15 ։ Երեմ. ծբ. 21 ։

ն Երեմ. ծբ. 24 , Ա. ։

շ Ա Մն. զ. 14 ։ Եզր. է. 1 ։

ո Երեմ. իա. 1 ։ իթ. 25 ։

† Եբր. երեսը տեսնողներէն . Եսթ. ա. 14 ։

չ Տես Երեմ. ծբ. 25 ։

պ Ղկ. իզ. 33 ։ Բ Օր. իը. 36 , 64 ։ Գլ. իգ. 27 ։

ջ Երեմ. խ. 5 ։

ռ Երեմ. խ. 7 , 8 , 9 ։

‡ Կամ՝ ծառաներէն

Ն. Ք. Գ. 588
* Երեմ. խա. 1, 2:
‡ Երեմ. խգ. 4, 7:
562
† Երեմ. ծբ. 31, 〜:

ծառայութիւն ըրէք, ու ձեզի ա-
ղէկ պիտի ըլլայ ։
25 Եւ *եղաւ որ եօթներորդ ամիսը՝
թագաւորաց սերունդէն եղող Ե-
ղիսամայի որդւոյն Նաթանիային
որդին Իսմայէլը տասը մարդով ե-
կաւ. ու Գոդողիան զարկին, ու
մեռաւ, նոյնպէս ալ անոր հետ
Մասփա եղող Հրէաները ու Քաղ-
26 դէացիները ։ Եւ բոլոր ժողովուր-
դը պզտիկէն մինչև մեծը՝ ու զօրաց
իշխանները ելան ‡Եգիպտոս գա-
ցին. քանզի Քաղդէացիներէն
վախցան ։
27 †Ու եղաւ որ Յուդայի Յովաքին
թագաւորին գերութեանը երսուն-
ուեօթներորդ տարին երկոտասա-
ներորդ ամիսը՝ ամսուն քսանըեօթ-
ներորդ օրը, Բաբելոնի Եւիլմարով-
դաք թագաւորը՝ իր թագաւոր ե-
ղած տարին, Յուդայի Յովաքին
թագաւորին §գլուխը բարձրա-
ցուց, ու զանիկա բանտէն հանեց.
28 Եւ անոր հետ քաղցրութեամբ խօ-
սեցաւ, ու անոր աթոռը՝ Բաբե-
լոնի մէջ իր հետը եղող թագա-
29 ւորներուն աթոռէն վեր դրաւ ։ Եւ
անոր բանտի լաթերը փոխեց. ու
անիկայ իր կենացը բոլոր օրերուն
մէջ՝ ‖միշտ անոր առջևը հաց կ'ու-
30 տէր ։ Եւ անոր ռոճիկը մշտատև
ռոճիկ ըլլալով, անոր կենացը բո-
լոր օրերուն մէջ՝ թագաւորին կող-
մէն օրէ օր անոր կը տրուէր ։

Ն. Ք. Գ. 588
§ Տես Դն. խ. 13, 20:
‖ Բ Թագ. Թ. 7:

# ԱՌԱՋԻՆ ԳԻՐՔ ՄՆԱՑՈՐԴԱՑ

## ԳԼՈՒԽ Ա

Ն. Ք. Գ. 4004, 〜

1 Ադամի սերունդը մինչև Նոյ ։ 5 Յաբեթի որդիքը ։ 8 Քամի որդիքը ։ 17 Սեմի որդիքը ։ 24 Սեմի սերունդը մինչև Աբրահամ ։ 29 Իսմայէլի որդիքը ։ 32 Քետուրայի որդիքը ։ 34 Աբրահամի սերունդը՝ Եսաւէն ։ 43 Եդովմի թագաւորները ։ 51 Եդովմի իշխանները ։

* Ծն. դ. 25, 26 ; ե. 3, 6:
 բ Ծն. ժ. 2, 〜:
* Կամ՝ Դիփաթ.
† Կամ՝ Ռոդացիք
գ Ծն. ժ. 6, 〜:
դ Ծն. ժ. 8, 〜:
ե Բ Օր. բ. 23:
զ Ծն. ժ. 15, 〜:

1 Ադամ, *Սէթ, Ենովս, (2) Կայ-
նան, Մաղաղիէլ, Յարեդ,
3 Ենովք, Մաթուսաղայ, Ղամէք,
4 Նոյ. Սէմ, Քամ ու Յաբեթ ։
5 բՅաբեթին որդիքը՝ Գոմեր, Մա-
գոգ, Մադայ, Յաւան, Թոբէլ,
6 Մոսոք ու Թիրաս էին ։ Եւ Գո-
մերին որդիքը՝ Ասքանազ, *Րիփաթ
7 ու Թորգոմա էին ։ Եւ Յաւանին
որդիքը՝ Եղիսայ, Թարսիս, Կի-
տացիք ու †Դոդացիք էին ։
8 գՔամին որդիքը՝ Քուշ, Մեստ-
րեմ, Փուդ ու Քանան էին ։
9 Եւ Քուշին որդիքը՝ Սաբա, Եւի-
լա, Սաբաթա, Ռեգմա ու Սեբե-
թաքա էին ։ Եւ Ռեգմայի որ-
10 դիքը՝ Սաբա ու Դեդան էին ։ Եւ
Քուշ դծնաւ Նեբրովթը. ասիկայ
սկսաւ երկրի վրայ զօրաւոր ըլլալ ։
11 Եւ Մեստրեմ ծնաւ Ղուդացինե-
րը, Անամացիները, Ղաբացինե-
12 րը, Նեփթուքացիները, Պաթու-
րեսացիները, ու Քասղուքացինե-
րը, (ուսկից որ Փղշտացիք ելան,)
13 ու եԿափթորացիներն ալ ։ Եւ
զՔանան ծնաւ իր անդրանիկը Սի-
14 դոնը, նաև Գետը, Յեբուսացին,
15 Ամօրհացին, Գերգեսացին, Խևա-
16 ցին, Արուկեցին, Ասենացին, Ա-
րուադացին, Սամարացին ու Եմա-
թացին ։
17 էՍեմին որդիքը՝ Եղամ, Ասուր,
Արփաքսադ, Ղուդ, Արամ, Հուս,
Հուլ, Գաթեր ու ըՄոսոք էին ։
18 Եւ Արփաքսադ ծնաւ Սաղան, և
19 Սաղա ծնաւ Եբերը. Ու Եբերին
երկու որդի ծնան. մէկուն անունը
‡Փաղէկ էր, քանզի երկիրը անոր
օրերը բաժնուեցաւ. և անոր եղ-
20 բօրը անունը Յեկտան էր ։ Ու
թՅեկտան ծնաւ Եղմովդադը, Սա-
21 ղաբը, Ասարմօթը, Յարաքը, Ա-
22 դորամը, Ուզալը, Դեկղան, Գե-
23 բաղը, Աբիմէէլը, Սաբան, Ոփիրը,
Եւիլան ու Յոբաբը. ամէն ասոնք՝
Յեկտանին որդիքն էին ։
24 ժՍէմ, Արփաքսադ, Սաղայ,
25 ԷԵբեր, Փաղէկ, Ռագաւ, (26) Սե-
27 րուգ, Նաքովր, Թարայ, ԼԱբ-
րամ, այսինքն Աբրահամ ։
28 Աբրահամին որդիքը՝ Իսահակ
29 ու ծԻսմայէլ էին ։ Անոնց ծնունդ-
ները ասոնք են. կԻսմայէլին անդ-
րանիկը՝ Նաբէօթ, ետքը Կեդար,
30 Ադբէէլ, Մաբսամ, Մասմա,
Դումա, Մասսէ, հՔոդադ, Թե-
31 մա, Յետուր, Նափէս ու Կեդմա.
Իսմայէլի որդիքը ասոնք էին ։
32 Եւ Աբրահամին հարճին՝ ձՔե-
տուրային որդիքը. անիկայ ծնաւ
Զեմրանը, Յեկսանը, Մադանը,
Մադիանը, Յեսբոկը ու Սովէն ։
Ու Յեկսանին որդիքը՝ Սաբա ու
33 Դեդան էին ։ Եւ Մադիանին որ-
դիքը՝ Գեփա, Ափէր, Ենովք,

Ն. Ք. Գ. 4004, 〜
է Ծն. ժ. 22 ; ժա. 10:
ը Ծն. ժ. 23 Կամ՝ Մաշ:
‡ Այս՝ բաժանում. Ծն. ժ. 25:
թ Ծն. ժ. 26:
ժ Ծն. ժա. 10, 〜; Ղուկ. գ. 36, 〜:
է Ծն. ժա. 15:
լ Ծն. ժէ. 5:
խ Ծն. իա. 2, 3:
ծ Ծն. ժզ. 11, 15:
կ Ծն. իե. 13—16:
հ Ծն. իե. 15:
Իբր 1853
ձ Ծն. իե. 1, 2:

Ն. Ք. Գք.
Իրր 1853

Աբիդա ու Ելդագա էին . ասոնք
ամէնը Քետուրային որդիքն էին ։
34 Եւ [ղ]Աբրահամ ծնաւ Իսահակը ։
[ճ]Իսահակին որդիքը՝ Եսաւ ու Իս-
35 րայէլ էին ։ [մ]Եսաւին որդիքը՝ Ե-
ղիփազ, Ռագուէլ, Յեուս, Յեգղոմ
36 ու Կորխ էին ։ Եղիփազին որդիքը՝
Թեման, Օմար, Սեփո, Գոթամ,
Կենեզ, Թամնա ու Ամաղէկ էին ։
37 Ռագուէլին որդիքը՝ Նահաթ, Զա-
38 րա, Սամմա ու Մեզա էին ։ Ու
[յ]Սէիրին որդիքը՝ Ղոտան, Սոբաղ,
Սեբեգոն, Անա, Դիսոն, Եսեր ու
39 Դիսան էին ։ Եւ Ղոտանին որդի-
քը՝ Քոռի ու Հեմամ էին . և
Թամնա՝ Ղոտանին քոյրն էր ։
40 Սոբաղին որդիքը՝ Գաղուան, Մա-
նաքաթ, Գեբաղ, Սեփո ու Օնամ
էին ։ Ու Սեբեգոնին որդիքը՝ Ա-
41 յիա ու Անա էին ։ Անային որդին
[ն]Դիսոն . ու Դիսոնին որդիքը՝
[շ]Ամրան, Եսբան, Յեթրան ու Քա-
42 ռան էին ։ Եսերին որդիքը՝ Բաղ-
ղան, Զաաւան ու [ո]Յաական էին ։
Դիսանին որդիքը՝ Հուս ու Առան
էին ։
43 Եւ [չ]ասոնք են այն թագաւորնե-
րը՝ որ Եդովմի երկրին մէջ թա-
գաւորեցին, Իսրայէլի որդւոցը
վրայ թագաւոր մը թագաւորելէն
առաջ . Բէովրի որդին Բաղան .
ու անոր քաղաքին անունը Դեն-
44 նաբա էր ։ Եւ Բաղան մեռաւ, ու
անոր տեղը Բօսրացի Զարային որ-
45 դին Յոբաբը թագաւորեց ։ Եւ
Յոբաբը մեռաւ, ու անոր տեղը
Թեմանացւոց երկրէն Հուսամը
46 թագաւորեց ։ Եւ Հուսամը մե-
ռաւ, ու անոր տեղը Բադադին
որդին Ադադը թագաւորեց, որ
Մովաբի դաշտին մէջ Մադիանա-
ցիները կոտորեց . և անոր քաղա-
47 քին անունը Աւիթ էր ։ Եւ Ա-
դադը մեռաւ, ու անոր տեղը Մաս-
րեկացի Սամաղան թագաւորեց ։
48 [պ]Եւ Սամաղան մեռաւ, ու անոր
տեղը Գետին քովը Ռոբովթէն ե-
49 ղող Սաւուղը թագաւորեց ։ Եւ Սա-
ւուղը մեռաւ, ու անոր տեղը Աքո-
բորին որդին Բաաղանանը թագա-
50 ւորեց ։ Եւ Բաաղանանը մեռաւ, ու
անոր տեղը [ջ]Ադադը թագաւորեց .
և անոր քաղաքին անունը Փոգով
էր . ու անոր կնկանը անունը Մե-
տաբեէլ էր, որ Մեզաաբին աղջը-
կանը Մատրեթին աղջիկն էր ։
51 Եւ Ադադին մեռնելէն ետքը՝
[ռ]Եդովմի իշխանները եղան . Թամ-
նա իշխան, Գաղուա իշխան, Յե-
52 թաթ իշխան, Ողիբամա իշխան,
53 Էլա իշխան, Փինոն իշխան, Կե-
նէզ իշխան, Թեման իշխան, Մաբ-
54 զար իշխան, Մագեդիէլ իշխան,

ղ Ծն. իա. 2, 3 ։
ճ Ծն. իե. 25, 26 ։
մ Ծն. լզ. 9, 10 ։
յ Ծն. լզ. 20 ։
ն Ծն. լզ. 25 ։
շ Ծն. լզ. 26 Կ'ըսուի Ամադան ։
ո Ծն. լզ. 27 Կ'ըսուի Ական ։
Իրր 1676
չ Ծն. լզ. 31, ☙ ։
պ Ծն. լզ. 37 ։
ջ Ծն. լզ. 39 ։
Իրր 1496
ռ Ծն. լզ. 40 ։

Իրամ իշխան . Եդովմին իշխաննե-
րը ասոնք էին ։

## ԳԼ. Բ

1 Իսրայէլի որդիքը ։ 3 Յուդայի սերունդը՝ Թամարէն ։ 13 Յեսսէի որդիքը ։ 18 Եսրոնեան Քաղեբին սերունդը ։ 21 Եսրոնի սերունդը՝ Մաքիրի աղջիկէն ։ 25 Յերեմիէլի սերունդը ։ 34 Սեսանի սերունդը ։ 42 Քաղեբի սերունդին մէկ ուրիշ ճիւղը ։ 50 Ովրեան Քաղեբին որդիքը ։

1 Իսրայէլի որդիքը ասոնք են .
[ս]Ռուբէն, Շմաւոն, Ղեւի, Յու-
2 դա, Իսաքար, Զաբուղոն, Դան,
Յովսէփ, Բենիամին, Նեփթաղիմ,
Գադ ու Ասեր ։
3 [վ]Յուդայի որդիքը՝ Էր, Օնան ու
Սելոմ էին . [տ]իրեքը՝ [ր]Քանանա-
ցի Շաւային աղջիկէն ծնան անոր .
ու Յուդային անդրանիկը [ց]Էր՝ Տէ-
րոջը առջևը չար ըլլալուն հա-
մար, Տէրը զանիկայ մեռցուց ։
4 Եւ անոր հարսը [ւ]Թամար՝ Փարէսը
ու Զարան ծնաւ անոր ։ Յուդային
բոլոր որդիքը հինգ էին ։
5 [փ]Փարեսին որդիքը՝ Եսրոն ու
6 Համուլ էին ։ Եւ Զարային որ-
դիքը՝ [ք]Զամրի, [օ]Եթան, Եման,
Քաղքօլ ու *Դարա ։ Ամէնը հինգ
7 էին ։ Եւ [ֆ]Քարմիին որդին՝ Աքար
էր, որ [ա]նզովածով մեղք գործեց,
ու Իսրայէլը նեղութեան մէջ ձը-
8 գեց ։ Ու Եթանին որդին՝ Ազա-
9 րիա էր ։ Ու Եսրոնին որդիքը՝ ո-
րոնք անոր ծնան, Յերամէլ, [բ]†Ա-
րամ ու ‡Քեղուբա էին ։
10 Եւ Արամ ծնաւ [գ]Ամինադաբը,
ու Ամինադաբ ծնաւ [դ]Յուդայի որ-
11 դւոց իշխանը Նաասոնը, Եւ Նաա-
սոն ծնաւ [ե]Սաղմոնը, ու Սաղմոն
12 ծնաւ Բոոսը, Եւ Բոոս ծնաւ Ով-
բէդը, ու Ովբէդ ծնաւ Յեսսէն,
13 [զ]Եւ Յեսսէ ծնաւ իր անդրանիկը՝
Եղիաբը, ու երկրորդը՝ Աբինադա-
14 բը, ու երրորդը՝ Սամաան, Չոր-
րորդը՝ Նաթանայէլը, հինգերորդը՝
15 Հռադային, Վեցերորդը՝ Ասոմը,
16 ու եօթներորդը՝ Դաւիթը ։ Եւ
անոնց քոյրերը՝ Շարուհեա ու Ա-
բիգեա էին ։ [է]Ու Շարուհեային
որդիքը իրեք էին . Աբեսսա, Յո-
17 վաբ ու Ասայէլ ։ Եւ [ը]Աբիգեա
ծնաւ Ամեսային . ու Ամեսայիին
հայրը՝ Իսմայէլացի Յեթերն էր ։
18 Ու Եսրոնի որդին Քաղէբը՝ իր
կնիկէն Ազուբայէն Յերիօթը ծը-
նաւ . և անոր որդիքը ասոնք են .
19 Յասեր, Սովբաբ ու Արդօն ։ Ու
երբոր Ազուբա մեռաւ, Քաղէբ
իրեն [թ]կին առաւ Եփրաթը, որ ա-
20 նոր ծնաւ Ովրը ։ Եւ Ովր ծնաւ
Ուրին, ու Ուրի ծնաւ [ժ]Բեսելիէլը ։
21 Եւ անկէ ետքը Եսրոն՝ Գաղաա-
դու հօրը [ի]Մաքիրին աղջկանը մը-

Ն. Ք. Գք.
Իրր 1496
1752, ☙
ս Ծն. իթ. 32; լ. 5; լե. 18, 22; խզ. 8, ☙ ։
վ Ծն. լը. 3; խզ. 12; Թու. իզ. 19 ։
տ Ծն. լը. 2 ։
ր Ծն. լը. 7 ։
ց Ծն. լը. 29, 30; Մատ. ա. 3 ։
ւ Ծն. խզ. 12; Հռութ. դ. 18 ։
փ Յես. է. 1 Կ'ըսուի Զաբդի ։
ք Գ Թագ. դ. 31 ։
* Կամ՝ Դարդա ։
օ Տես գլ. դ. 1 ։
ֆ Յես. զ. 18; է. 1 ։
ա Մատ. ա. 3, 4 ։
Իրր 1471
† Եբր. Րամ
Իրր 1090
‡ Կամ՝ Քաղէբ . տես համր 18, 42 ։
բ Հռութ. դ. 19, 20; Մատ. ա. 4 ։
գ Թու. ա. 7; բ. 3 ։
դ Հռութ. դ. 21; Մատ. ա. 4 ։
ե Ա Թագ. ժզ. 6 ։
զ Բ Թագ. բ. 18 ։
է Տես Բ Թագ. ժէ. 25 ։
Իրր 1471
ը Համր 50 ։
թ Ել. լա. 2 ։
ժ Թու. իէ. 1 ։

Ն. Ք. Ծ.
Իբր 1471

տաւ , ու զանիկայ առաւ . և ինքը
վաթսուն տարեկան էր . ու անի-
22 կայ Սեգուբը ծնաւ անոր ։ Եւ Սե-
գուբ ծնաւ Յայիրը . ու ասիկայ
Գաղաադու երկրին մէջ քսանու-
23 իրեք քաղաք ունէր ։ յՈւ *Գեսու-
րը , ու Արամը" , Յայիրի գիւղա-
քաղաքները , Կանաթը ու անոր
գեղերը՝ վաթսուն քաղաք առաւ
անոնցմէ . ասոնց ամէնը՝ Գաղաադու
24 հօրը Մաքիրին որդւոցն էր ։ Ու
†Եսրոն՝ Քաղէբ եփրաթայի մէջ
մեռնելէն ետքը , Եսրոնին կնիկը
Աբիան" անոր ծնաւ ъԹեկուէին
հայրը Ասքուրը ։
25 Ու Եսրոնին անդրանկանը Յե-
րամէլին որդիքը ասոնք էին . անդ-
րանիկը՝ Հռամ , Բունա , Օրէն ,
26 Ասոմ ու Աքիա ։ Եւ Յերամէլը
մէկ ուրիշ կնիկ մը ունէր , ու անոր
անունը Ատարա էր . անիկայ Օնա-
27 մի մայրը եղաւ ։ Ու Յերամէլին
անդրանկանը Հռամին որդիքը ա-
սոնք էին . Մաաս , Յամին ու Ա-
28 կոր ։ Եւ Օնամի որդիքը՝ Սամա-
յի ու Յադայ էին ։ Եւ Սամայիին
որդիքը՝ Նադաբ ու Աբիսուր էին ։
29 Եւ Աբիսուրին կնկանը անունը Ա-
բիհայիլ էր , որ անոր ծնաւ Աք-
30 բանը ու Մովղիդը ։ Եւ Նադա-
բին որդիքը՝ Սաղադ ու Ափփեմ
էին . ու Սաղադ անորդի մեռաւ ,
31 Եւ Ափփեմին որդին՝ Յեսփ , ու
Յեսփին որդին՝ Սեսան , ու ւՍե-
32 սանին որդին Աղայի էր ։ Եւ Սա-
մայիին եղբօրը՝ Յադային որդիքը ,
Յեթեր ու Յովնաթան էին . ու
33 Յեթեր անորդի մեռաւ ։ Եւ Յով-
նաթանի որդիքը՝ Փաղէթ ու Զա-
զա էին ։ Յերամէլին որդիքը ա-
սոնք էին ։
34 Եւ Սեսան տղաքներ չունեցաւ ,
բայց միայն աղջիկներ ։ Ու Սեսան՝
Յարքա անունով Եգիպտացի ծա-
35 ռայ մը ունէր . Ու Սեսան իր աղ-
ջիկը՝ իր Յարքա ծառային կնիկ
տուաւ . որ անոր՝ Եթթին ծնաւ ։
36 Ու Եթթի ծնաւ Նաթանը , և
37 Նաթան ծնաւ ա Զաբադը , Ու
Զաբաթ ծնաւ Ոփղաղը , և Ոփղաղ
38 ծնաւ Ովբէդը , Ու Ովբէդ ծնաւ
Յէուն , և Յէու ծնաւ Ազարիան ,
39 Ու Ազարիա ծնաւ Քեղղեսը , և
40 Քեղղես ծնաւ Եղեասան , Ու Ե-
ղեասա ծնաւ Սոսոմէն , և Սոսոմէ
41 ծնաւ Սեղղումը , Ու Սեղղում ծը-
նաւ Յեկամիան , և Յեկամիա ծնաւ
Եղիսաման ։

յ Թուոց. լբ. 41. բ Օր. գ. 14. Յես. ժգ. 30.
* Կամ՝ Գեսուրացւոց ու Ասորւոց երկիրն
† Կամ Եսրոնին մեռնելէն ետքը՝ Քաղէբ Եփրաթա եկաւ, ու անոր հետ Եսրոնին կնիկը Աբիան, որ
ъ Գլ. դ. 5.
ւ Տես Հմր 34, 35.
ա Գլ. ժա. 41.

Իբր 1471,

42 Ու Յերամէլին եղբօրը Քաղեբին
որդիքը . անոր անդրանիկը Մեսա՝
Զիփի հայրն էր , ու Քեբրոնի հայ-
43 րը՝ Մարեսայի որդին էր ։ Եւ Քեբ-
րոնի որդիքը՝ Կորխ , ու Թափուա ,
44 և Րոկոմ ու Սեմա էին ։ Ու Սեմա
ծնաւ Հռաամը՝ Յարկաամի հայրը ,
45 ու Րոկոմ ծնաւ Սամային ։ Եւ
Սամայիին որդին Մաոն էր . ու
Մաոնը՝ Բեթսուրին հայրն էր ։
46 Եւ Քաղեբին հարճը Գեփան ծնաւ
Առանը , Մոսան ու Գազէզը . և
47 Առան ծնաւ Գազէզը ։ Ու Յա-
դայիին որդիքը՝ Հռագեմ , Յովա-
թամ , Գեսան , Փաղէտ , Գեփա
48 ու Սագափ էին ։ Եւ Քաղեփին
հարճը Մաաքան ծնաւ Սեբերը ու
49 Թարանան . Նաև ծնաւ Մադման-
նայի հայրը Սագափը , ու Մաքա-
բենայի հայրը ու Գաբաայի հայ-
րը Շաւան . և Քաղեբին աղջիկը՝
ւԱքսա էր ։
50 ղ Եփրաթի անդրանկանը Ովրի
որդւոյն Քաղեբին որդիքը ասոնք
էին . Կարիաթարիմի հայրը Սո-
51 բաղ , Բեթլէհեմի հայրը՝ Սաղմոն ,
52 Բեթգադերի հայրը՝ Հարեփ ։ Եւ
Կարիաթարիմի հօրը Սոբաղին որ-
դիքը՝ Հարօէ , ու Մանագաթա-
53 ցւոց կէսն էին ։ Եւ Կարիաթա-
րիմի տոհմերը՝ Յեթերացիք , Փու-
թացիք , Սամաթացիք ու Մասա-
րացիք էին . Սարաացիք ու Եսթա-
54 ւուղացիք ասոնցմէ ելան ։ Սաղ-
մոնին որդիքը՝ Բեթլէհեմ , Նե-
տոփաթացիք , Ատարովթ , Յովա-
բին տունը , ու Մանաքադացւոց
55 կէսը , ու Սարացիք էին ։ Եւ
Գաբեսի մէջ բնակող դպիրներուն
տոհմերը Թարգաթացիք , Սամա-
թացիք , Սովկաթացիք . ե ասոնք՝
ըՌեքաբի տանը հօրմէն՝ Եմաթէն
ելլող ա Կենեցիք էին ։

Ն. Ք. Ծ.
Իբր 1471,

ւ Յես. ժե. 17.
ղ Հմր 19.
ե Դատ. ա. 16.
ա Երեմ. լե. 2.

## ԳԼ. Գ.

1 Դաւիթին որդիքը ։ 10 Անոր սերունդը մինչև Սեդեկիա ։ 17 Յեքոնիային յաջորդները ։

1 Ու Դաւիթին Քեբրոնի մէջ ծնած
որդիքը ասոնք էին . անդրանի-
կը ա Ամնոն՝ բ Յեզրայելացի Աքի-
նոամէն , երկրորդը գ Դանիէլ՝ Կար-
2 մելացի Աբիգեայէն , Երրորդը Ա-
բիսողոմ՝ Գեսուրի թագաւորին
Թողմիին աղջկանը Մաաքային որ-
դին , չորրորդը Ադոնիա՝ Ագգիթին
3 որդին , Հինգերորդը Սափատիա՝
Աբիտալէն , վեցերորդը Յեթրամ ,
4 իր կնիկէն՝ դ Եգղայէն , Աս վեցը
անոր ծնան Քեբրոնի մէջ . և ե հոն
եօթը տարի ու վեց ամիս թագա-
ւորութիւն ըրաւ . ու զԵրուսա-
ղեմի մէջ երեսունուերեք տարի թա-
գաւորութիւն ըրաւ ։
5 է Ու Երուսաղեմի մէջ ասոնք ծը-
նան անոր . Սամաա , Սովբաբ , Նա-
թան ու ըՍողոմոն . աս չորսը՝ թԱ-
միելի աղջիկէն՝ Բերսաբէէն ծնած
6 էին . Եւ Յեբաար , ու ‡Եղիսամա ,

Իբր 1053,

ա բ Թագ. գ. 2.
բ Յես. ժե. 56.
գ բ Թագ. գ. 3 Կ'ըսուի Քիլաբ.
դ բ Թագ. գ. 5.
ե բ Թագ. բ. 11.
զ բ Թագ. ե. 5.
է բ Թագ. ե. 14. Գլ. ժդ. 4.
ը բ Թագ. ժբ. 24.
թ բ Թագ. ժա. 3 Կ'ըսուի Եղիամ.
‡ Կամ՝ Եղիսուա. բ Թագ. ե. 15.

Ն․ Ք․ ԶՔ․ Իբր 1053,

Ժ Գլ․ Ժզ․ 7 Կ'ըսուի Բաղիադա ։
Է Տես Բ Թագ․ Ե․ 14․ 15․ 16 ։
Լ Բ Թագ․ Ժզ․ 1 ։
Խ Գ Թագ․ Ժա․ 43 ։ Ժե․ 6 ։
Ծ Բ Մն․ Իա․ 17 Կ'ըսուի Յովաքազ․ Ի․ Ժ իբ․ 6 Կ'ըսուի Ազարիա ։
Կ Դ Թագ․ Ժե․ 30 Կ'ըսուի Ոզիա ։

7 ու Եղիփաղէտ, Եւ Նոգա, ու Նա-
8 փեկ ; և Յափիէ, Ու Եղիսամա,
ու Ժ Եղիադա ու Եղիփաղէտ․ Է ու-
9 թն ինն էին․ Ամենն ալ Դաւիթին
որդիներն էին, հարճերուն որդի-
ներէն, ու անոնց քրոջմէն՝ Լ Թա-
մարէն 'ի զատ ։
10 Եւ Սողոմոնին որդին Խ Ռոբովամ
էր․ անոր որդին Աբիա, անոր որ-
դին Ասա, անոր որդին Յովսա-
11 փատ, Անոր որդին Յովրամ, անոր
որդին Ծ Ոքոզիա, անոր որդին Յո-
12 վաս, Անոր որդին Ամասիա, անոր
որդին Կ Ազարիա, անոր որդին Յո-
13 վաթամ, Անոր որդին Աքազ, ա-
նոր որդին Եզեկիա, անոր որդին
14 Մանասէ, Անոր որդին Ամոն, ա-
15 նոր որդին Յովսիա ։ Եւ Յովսիա-
յին որդիքը, անդրանիկը Յօհա-
նան, երկրորդը Յովակիմ, եր-
րորդը Սեդեկիա, չորրորդը Սեղ-
16 ղում էր ։ Ու Յովակիմին որդիքը,
անոր որդին Յեքոնիա, անոր որդին
17 Սեդեկիա էր ։ Ու Յեքոնիային որ-
դիքը՝ Ասիր․ անոր որդին Սաղա-
18 թիէլ․ Նաև Մեղքիրամ, Փա-
դայիա, Սանէսար, Յեկամիա,
19 Ովսամա ու Նադաբիա էին ։ Եւ
Փադայիային որդիքը Զօրաբաբէլ
ու Սեմէի էին․ ու Զօրաբաբելին
որդիքը՝ Մեսուղամ ու Անանիա․
ու անոնց քոյրը Սաղօմիթ էր․
20 Նաև Ասուբա, ու Ողլ, և Բա-
րաքիա, ու Ասադիա և Յովսաբե-
21 սեդ․ հինգ էին ։ Եւ Անանիային
որդիքը՝ Փաղատիա ու Եսայի էին․
*Հռափայիային որդիքը, Ոռնային
որդիքը, Աբդիային որդիքը, Սե-
22 քենիային որդիքը" ։ Ու Սեքենիա-
յին որդին՝ Սեմայիա էր․ ու Սե-
մայիային որդիքը՝ Հ Քետտուս, և
Իգաղ, ու Բերիա, և Նաարիա
23 ու Սափատ․ վեց էին ։ Եւ Նաա-
րիային որդիքը՝ Եղիովէնայի, ու
Եզեկիա ու Եզրիկամ․ իրեք էին ։
24 Ու Եղիովէնայիին որդիքը՝ Ովդու-
իա, ու Եղիասիբ, և Փաղայիա,
ու Ակկուբ, և Հօհանան, ու Դա-
ղայիա և Անանի․ եօթն էին ։

* Կամ՝ անոր որդին Հռափայիա, անոր որդին Ոռնա, անոր որդին Աբդիա, անոր որդին Սեքենիա ։
Հ Եզր․ Ը․ 2 ։

## ԳԼ․ Դ

1 Յուդայի սերունդը ։ 5 Եսրոնին մեռնելէն ետքը՝ իրեն ծնած Ասքուրէն յառաջ եկած սերունդը ։ 9 Գաբեսին ու անոր աղօթք ընելուն վրայով ։ 21 Սելոմի սերունդը ։ 24 Շմաւոնի սերունդը, ու քաղաքները․ 39 անոնք Գեդովրին՝ ու Սէիր լեռը բնակող Ամաղեկացիներուն վրայ կը տիրեն ։

1300, ☞
Ա Ծն․ ԼԸ․ 29 ։ Խզ․ 12 ։
Բ Գլ․ Բ․ 52 Կ'ըսուի Հարօէ ։

1 Յուդայի որդիքը՝ Ա Փարէս, Ես-
րոն, ու Քարմի, և Ովր ու Սոբաղ
2 էին ։ Եւ Սոբաղին որդին Բ Ռէա-
յիան՝ Յեթը ծնաւ․ ու Յեթ՝ Ա-
քիմային ու Ղաադը ծնաւ․ Սա-
3 րաացւոց տոհմերը ասոնք են ։ Ու-

Ետամի Գ հօրմէն ասոնք եղան․ Յեզ-
րայէլ, ու Յեսմա ու Յեդբաս․ և
անոնց քրոջը անունը Եսեղեփոն
4 էր ։ Ու Գեդովրի հայրը Փանուէլ,
և Ովսայի հայրը Եզեր էր․ ասոնք
Բեթլէհեմի հօրը՝ Եփրաթի անդ-
րանկանը Դ Ովրին որդիքն էին ։
5 Ու Ե Թեկուէի հայրը Ասքուր եր-
կու կնիկ ունէր, Եղաա ու Նաա-
6 րա․ Եւ Նաարա անոր ծնաւ Ոքո-
զամը, Ոփերը, Թեմանը ու Ա-
հասթարին․ Նաարային որդիքը
7 ասոնք էին ։ Ու Եղաային որդիքը՝
Սարեթ, Սահառ ու Եթնան էին ։
8 Եւ Կովս ծնաւ Ենովբը, Սօբե-
բան, ու Հառումի որդւոյն Ահար-
հելին տոհմերը ։
9 Եւ Գաբէս՝ իր եղբայրներէն
Է փառաւոր էր․ ու անոր մայրը ա-
նոր անունը Զ Գաբէս դրաւ, ըսե-
լով․ Զանիկայ տրտմութեամբ
10 ծնայ ։ Եւ Գաբէս՝ Իսրայէլի Աս-
տուծոյն աղաղակեց, ու ըսաւ․ Ե-
րանի թէ ամէն կողմանէ զիս օրհ-
նես, ու իմ սահմանս մեծցընես, և
քու ձեռքդ ինծի հետ ըլլայ, ու
զիս չարէն ազատես, որ ինծի
տրտմութիւն չըլլայ ։ Եւ Աս-
տուած անոր խնդիրքը կատարեց ։
11 Ու Սուհայի եղբայրը Քեղուբ՝
Մաքիրը ծնաւ, որ անիկայ Եսթոնի
12 հայրն էր ։ Եւ Եսթոն ծնաւ Բեթ-
ռափան, ու Փասէն, և Իրնաասին
հայրը Թանան․ ասոնք Հռեքայի
13 մարդիկներն էին ։ Ու Կենեզի որ-
դիքը՝ Է Գոթոնիէլ ու Սարայիա
էին․ և Գոթոնիելին որդին Ա-
14 թաթ էր ։ Ու Մաոնաթայի ծնաւ
Եփրան․ և Սարայիա ծնաւ Յո-
վաբը՝ Ը Գեքարասիմի հայրը․
(քանզի անոնք արհեստաւորներ
15 էին ։) Ու Յեփոնեան Քաղեբին
որդիքը՝ Իրու, Էլա ու Նաամ էին․
16 ու Էլային որդին՝ Կենէզ էր ։ Եւ
Յալէլէլի որդիքը՝ Զիփ, Զիփա,
17 Թիրիա ու Ասարէլ․ Ու Եզրային
որդիքը՝ Յեթեր, Մօրադ, Ափեր
ու Յաղօն էին․ ու անոր կնիկը ծը-
նաւ Մարիամը, և Սամային, ու
18 Եսթեմովի հայրը Յեսբան․ Եւ
անոր կնիկը Յուդիան ծնաւ Գե-
դովրի հայրը Յարեդը, Սոքովի
հայրը Քաբերը, ու Զանովի հայ-
րը Յեքթիէլը․ և Մօրադին առած
Փարաւոնի աղջկանը՝ Բեթիային
19 որդիքը ասոնք էին ։ Ու անոր կըն-
կանը Նաեմին քրոջը՝ Ովդիային
որդիքը՝ Կէիլային հայրը Գարմին,
ու Մաքաթացի Եսթեմովն էր ։
20 Եւ Սիմոնի որդիքը՝ Ամնոն, Հռի-
նա, Բենանան ու Թիղօն էին․ ու
Յեսիին որդիքը՝ Զօհէթ ու Բեն-
զօհէթ էին ։

Ն․ Ք․ ԶՔ․ 1300, ☞
Գ Կամ՝ որդիքը
Դ Գլ․ Բ․ 50 ։
Ե Գլ․ Բ․ 24 ։
Է Ծն․ ԼԴ․ 19 ։
Զ Այ՝ տրտմութիւն ։
Է Յեսս․ Ժե․ 17 ։
Ը Այ՝ արհեստաւորաց ձորին
Է Նեեմ․ Ժա․ 35 ։

Ն. Ք. Գ. Յ. 1300, Ա
Ը Ծն. լը. 1, 5. Խզ. 12.

21 Եւ Յուդայի որդւոյն Սելոմին
որդիքը՝ Ղեքայի հայրը Էր, ու
Մարեսայի հայրը Ղաադա, և Ա-
բէայի տանը՝ բեհեզագործներուն
22 տանը տոհմերն էին. Նաև Յովա-
կիմը, և Քուզեբայի մարդիկները,
ու Յովասը և Սարափը՝ որոնք Մո-
վաբի մէջ ստացուածք ունեցան,
ու Յասուբի լեհէմ, *ու Ադդեբա-
23 րիմ աթթիկիմ" ։ Ասոնք բրուտ-
ներ, և պարտէզներու ու փարախ-
ներու մէջ բնակողներ էին. Թա-
գաւորին քովը անոր գործքին հա-
մար հոն կը բնակէին ։
24 Շմաւոնի որդիքը՝ Բ Նամուէլ,
Յամին, Յարիբ, Զարա, ու Սա-
25 ւուղ. Անոր որդին Սեղղում, ա-
նոր որդին Մաբսամ, անոր որդին
26 Մասմա ։ Ու Մասմայի որդիքը,
անոր որդին Ամուէլ, անոր որդին
27 Զաքուր, անոր որդին Սեմէի ։ Եւ
Սեմէի տասնուվեց տղայ ու վեց
աղջիկ ունէր. բայց անոր եղբայր-
ները շատ տղաքներ չունէին. ու
անոնց բոլոր տոհմերը Յուդայի որ-
28 դւոցը չափ չշատցան ։ Եւ անոնք
Գ Բերսաբէէի, ու Մօլադայի, ու
29 Ասեր սուաղի, Եւ Բաղայի, ու Ա-
30 սեմի, և Թուղադի, Ու Բաթուլի,
31 ու Հօրմայի, և Սիկելակի, Ու
Բեթմարքաբովթի, և Ե Ասեր սու-
սիմի, ու Բեթբարէիի և Սագարիմի
մէջ բնակեցան. մինչև Դաւիթին
թագաւոր եղած ատենը ասոնք էին
32 անոնց քաղաքները, Ու անոնց գե-
ղերը ։ Նաև Եթամ, Ային, Ռե-
մօն, Թոքան ու Ասան. հինգ քա-
33 ղաք ։ Եւ աս քաղաքներուն բո-
լորտիքը եղած բոլոր դեղերը մինչև
Զ Բաաղը. անոնց բնակութիւնները
34 ու † վիճակները ասոնք էին ։ Ու
Մոսոբաբ, և Յամլէք, ու Ամա-
35 սիայի որդին Յօսա, Եւ Յովէլ, ու
Ասիէլի որդւոյն Սարայիայի որդւոյն
36 Յօսաբիային որդին Յէուն, Ու Ե-
ղիովէնայի, ու Յեկեբայ, և Յա-
սույիա, ու Ասայիա, և Ադիէլ, ու
37 Յեսիմիէլ, ու Բանեա, Եւ Սեմա-
յիայի որդւոյն Սամարիի որդւոյն
Յեդայիայի որդւոյն Աղօնի որդւոյն
38 Սեփէիին որդին Զիզան ։ Աս ա-
նուններովը յիշուածները՝ իրենց
տոհմերուն մէջ իշխաններ էին. ու
անոնց ազգատոհմները խիստ շատ-
39 ցան ։ Եւ իրենց անասուններուն
համար արօտ փնտռելով՝ Գեդովրի
մուտքը գացին մինչև ձորին արևե-
40 լեան կողմը. Եւ առատ ու աղէկ
արօտ գտան. ու ան երկիրը ըն-
դարձակ էր, և խաղաղութեան ու
հանդարտութեան մէջ էր. քանզի
առաջ՝ Քամէն եղողները հոն կը
41 բնակէին ։ Եւ աս անուններովը
գրուածները՝ Յուդայի Եզեկիա
թագաւորին օրերը գացին, ու ա-
նոնց վրանները և հոն գտնուած բը-
նակարանները Է զարկին, ու զանոնք
բնաջինջ ըրին մինչև աս օրս, և ա-
նոնց տեղը բնակեցան. վասն զի
հոն իրենց հօտերուն համար արօտ
42 կար ։ Ու անոնցմէ՝ այսինքն Շմա-
ւոնի որդիներէն հինգ հարիւր մարդ
Սէիր լեռը գացին, իրենց վրայ
Յեսսիի որդիքը՝ Փաղատիան, Նա-
արիան, Հռափայիան ու Ոզիէլը
43 իշխան ունենալով. Եւ Ծ Ամաղեկին
փախստական մնացորդները զարկին,
ու մինչև աս օրս հոն բնակեցան ։

## ԳԼ. Ե

1 Իր անդրանկութենէն զրկուած Ռուբէնին սե-
րունդը մինչև գերութիւնը. 9 անոնց բնակու-
թիւնը, ու Հագարացւոց վրայ ըրած յաղ-
թութիւնը ։ 11 Գադի որդւոցը գլխաւոր
մարդիկը՝ ու բնակութիւնները ։ 18 Ռուբե-
նեանց, Գադեանց, ու Մանասէի կէս ցեղին
թիւը ու յաղթութիւնները ։ 23 Կէս ցեղին
բնակութիւնները ու գլխաւոր մարդիկները ։
25 Անոնց գերութիւնը իրենց մեղքին համար ։

1 Եւ Իսրայէլին անդրանկանը Ռու-
բէնին որդիքը. (քանզի Ա անդ-
րանիկը անիկայ էր. բայց Բ իր հօրը
անկողինը պղծելուն համար, Գ իր
անդրանկութեան իրաւունքը Իս-
րայէլի որդւոյն՝ Յովսէփին որդւոցը
տրուեցաւ. ու ազգահամարին մէջ
2 անդրանիկի պէս չգրուեցաւ ։ Իսկ
Դ Յուդա իր եղբայրներէն զօրաւոր
եղաւ. ու անկէ Ե իշխաններ ելան.
բայց անդրանկութեան իրաւունքը
3 Յովսէփինն էր ։) Իսրայէլին անդ-
րանկանը Զ Ռուբէնին որդիքը՝ Ե-
նովք, Փաղղուս, Եսրոն ու Քար-
4 մի էին ։ Յովէլին որդիքը, անոր
որդին Սեմայիա, անոր որդին Գոգ,
5 անոր որդին Սեմէի, Անոր որդին
Միքա, անոր որդին Ռէայիա, ա-
6 նոր որդին Բաաղ, Անոր որդին
Բէերա, որն որ Է Ասորեստանի
Թագղաթ փաղասար թագաւորը
գերի տարաւ. անիկայ Ռուբե-
7 նեանց իշխանն էր ։ Եւ անոր եղ-
բայրները՝ իրենց տոհմերովը, Ը երբ
որ ազգահամարին մէջ գրուեցան,
անոնց գլխաւորը՝ Յեիէլն էր, ետքը
8 Զաքարիան, Եւ Յովէլի որդւոյն
Սեմայի որդւոյն Ազազին որդին՝
Բաղան. ասիկայ Թ Արոերի մէջ, ու
անկէ մինչև Նաբաւ, ու Բէէլմօն
9 բնակեցաւ. Եւ արևելեան կողմը՝
Եփրատ գետէն մինչև անապատը
բնակեցաւ. քանզի անոնց անա-
սունները Ժ Գաղաադու երկրին մէջ
10 շատցեր էին ։ Ու Սաւուղին օրերը՝
անոնք պատերազմ ըրին Ի Հագա-
րացւոց հետ, որոնք իրենց ձեռքը
ինկան. ու Գաղաադու բոլոր ա-

* Կամ՝ բայց ասոնք հին բաներ են ։
Բ Ծն. խզ. 10, և Ել. զ. 15, և Թու. իզ. 12 Կ'ըսուի Յամուէլ ։
Գ Յես. ժթ. 2 ։
Ե Յես. ժթ. 5 Կ'ըսուի Ասեր սուսա ։
Զ Յես. ժթ. 8 Կ'ըսուի Բաաղեթ բէեր ։
† Կամ՝ ազգաբանութիւնները
Իբր 715

Ն. Ք. Գ. Յ. Իբր 715
Է Դ Թագ. ժը. 8 ։
Ծ Տես Ա Թագ. ժե. 8 ։ Լ. 17 ։ Բ Թագ. Ը. 12 ։
1300, Ա
Ա Ծն. իթ. 32 ։ խթ. 3 ։
Բ Ծն. լե. 22 ։ խթ. 4 ։
Գ Ծն. խը. 15, 22 ։
Դ Ծն. խթ. 8. 10 ։ Սաղ. կ. 7 ։ ճը. 8 ։
Ե Միք. ե. 2 ։ Մատ. բ. 6 ։
Զ Ծն. խզ. 9 ։ Ել. զ. 14 ։ Թու. իզ. 5 ։
Է Դ Թագ. ժե. 29 ։ ժզ. 7 ։
Ը Տես համ. 17 ։
Թ Յես. ժգ. 15, 16 ։
Ժ Յես. իբ. 9 ։
Ի Ծն. իե. 12 ։

Ն․ Ք․ ԶՔ․ 1300,

րևելեան կողմերը՝ անոնց վրաննե–
րուն մէջը բնակեցան ։
11 Եւ Գադի որդիքը ասոնց դիմա–
Լ Յես․ Ժգ․ 11, 24,
ցը՝ Լբասանու երկրին մէջ բնակե–
12 ցան մինչև Սելքա ․ Գլխաւորը՝
Յովէլ, ու երկրորդը՝ Սափամ,
ետքը Յանայի, ու Սափատ՝ Բա–
13 սանի մէջ ։ Եւ անոնց եղբայրները
իրենց ազգատոհմերուն համեմատ,
Միքայէլ, Մեսուղամ, Սաբէէ,
Յովրէ, Յաքան, Զիա, ու Եբեր,
14 եօթն էին ։ Ասոնք Բուզի որդւոյն
Յաքդովի որդւոյն Յեսիսայի որ–
դւոյն Միքայելի որդւոյն Գաղաա–
դի որդւոյն Յարոայի որդւոյն Հու–
րիի որդւոյն Աբիքելին որդիքն է–
15 ին ։ Անոնց ազգատոհմերուն իշ–
խանը՝ Գունիի որդւոյն Աբդիելին
16 որդին Աքին էր ։ Եւ անոնք Գա–
ղաադու մէջ, Բասանի ու անոր
Ա․ Գւ․ Իէ․ 29,
գիւղաքաղաքներուն մէջ, ու Բ Սա–
րոնի բոլոր արուարձաններուն մէջ՝
մինչև անոնց սահմանները բնակե–
Գ Դ Թագ․ Ժե․ 5, 32,
17 ցան ։ Ամէն ասոնք Յուդայի Գ Յո–
վաթամ թագաւորին օրերը, ու
Դ Դ Թագ․ Ժդ․ 16, 28,
Իսրայէլի Դ Յերոբովամ թագաւո–
րին օրերը՝ ազգահամարին մէջ
գրուեցան ։
18 Ռուբէնի որդիքը, ու Գա–
դեանք, ու Մանասէի կէս ցեղը՝
քառասունուչորս հազար եօթը հա–
րիւր վաթսուն զօրաւոր, վահան
ու սուր կրող, և աղեղ քաշող,
պատերազմ սորված, ու պատե–
19 րազմի ելլող մարդիկներ էին ։ Եւ
Ե Ծն․ Իե․ 15, Գւ․ Ա․ 31,
անոնք Հագարացւոց, Ե Յետուրա–
ցւոց, Նափեսացւոց, ու Նոդա–
Իբր1300,
20 բացւոց հետ պատերազմ ըրին, Եւ
Զ անոնց յաղթեցին ․ ու Հագարա–
Զ Տես Հմր 22,
ցիք և բոլոր անոնց հետ եղողները
անոնց ձեռքը տրուեցան ․ քանզի
անոնք պատերազմի մէջ Աստուծոյ
աղաղակեցին, ու անոնց լսեց ․
Է Սաղ․ Իբ․ 4, 5,
21 վասն զի Է անոր ապաւինեցան ։ Եւ
անոնց անասունները՝ յիսուն հա–
զար ուղտ, ու երկու հարիւր յիսուն
հազար ոչխար ; ու երկու հազար
էշ, և հարիւր հազար մարդ գերի
22 ըրին ․ ( Քանզի շատերը մեռած ին–
կան ․ ինչու որ Ը պատերազմը
Ը Դ Թագ․ Ժե․ 29 ; Ժէ․ 6,
Աստուծմէ էր ․ ) ու մինչև Թ գերու–
թիւնը՝ անոնց տեղը բնակեցան ։
23 Եւ Մանասէի որդւոցը կէս ցեղը
ան երկրին մէջ բնակեցան, Բա–
սանէն մինչև Բաաղհերմոնը, Սա–
նիրը, ու Հերմոն լեռը ․ Ժ անոնք բազ–
24 մաթիւ էին ։ Եւ անոնց ազգա–
տոհմերուն իշխանները ասոնք է–
ին ․ Ափեր, Յեսսի, Եղիէլ, Եզրի–
էլ, Երեմիա, Ովդուիա ու Յաքդի–
էլ, ԺԱ զօրաւոր՝ քաջ ու ա–
նուանի մարդիկներ էին, ու իրենց
ազգատոհմերուն իշխաններն էին ։

Ն․ Ք․ ԶՔ․ Իբր1300,

25 Եւ իրենց հայրերուն Աստուծոյն
դէմ ապստամբեցան, ու ան երկ–
Ժ Դ Թագ․ Ժէ․ 7,
րին ազգացը ԺԲ աստուածներուն ե–
տևէն ԺԲ պոռնկեցան, որ Աս–
տուած զանոնք փնոնց առջևէն
26 բնաջնջ ըրած էր ։ Եւ Իսրայէլին
Իբր 771
Աստուածը՝ Ասորեստանի ԺԳ Փուղ
ԺԳ Դ Թագ․ Ժե․ 19,
թագաւորի հոգին՝ ու Ասորեստա–
Իբր 740
նի ԺԴ Թագղաթ փաղասար թագա–
ԺԴ Դ Թագ․ Ժե․ 29,
ւորին հոգին գրգռեց, ու Ռուբէ–
նեանները, Գադեանները, ու Մա–
նասէին կէս ցեղը գերի ըրաւ, և
ԺԵ Դ Թագ․ Ժէ․ 6 ; Ժը․ 11,
զանոնք ԺԵ Քաղան, ու Քաբովրը,
ու Հարան, ու Գովզան գետը տա–
րաւ մինչև աս օրս ։

ԳԼ․ Զ

1 Ղևիի որդիքը ։ 4 Քահանայից ազգահամարը մինչև գերութիւնը ։ 16 Գերսոնին, Մերարիին, ու կահաթին տոհմերը ։ 49 Ահարոնին պաշտօնը, ու անոր սերունդը մինչև Աքիմաաս ։ 54 Քահանայից ու Ղևտացւոց քաղաքները ։

Իբր1300,
1 Ղևիի որդիքը՝ Ա Գերսոն, կահաթ
Ա Ծն․ Խզ․ 11 ; Ել․ Զ․ 16 ; Թու․ Իզ․ 57 ; Գւ․ Իդ․ 6 ; Հմր 16,
2 ու Մերարի էին ։ Եւ կահա–
թին որդիքը՝ Ամրամ, Իսահառ,
3 Քեբրոն ու Ոզիէլ էին ։ Եւ Ամ–
րամին որդիքը՝ Ահարոն, Մովսէս
ու Մարիամ էին ։ Ու Ահարոնին
Բ Ղև․ Ժ․ 1,
որդիքը՝ Բ Նադաբ, Աբիուդ, Ե–
4 ղիազար ու Իթամար էին ։ Եղիա–
զար ծնաւ Փենէհէսը, ու Փենէհէս
5 ծնաւ Աբիսուան, Եւ Աբիսուա
ծնաւ Բոկկին, ու Բոկկի ծնաւ
6 Ոզին, Եւ Ոզի ծնաւ Զարիան, ու
7 Զարիա ծնաւ Մարիօթը, Ու Մա–
րիօթ ծնաւ Ամարիան ; և Ամարիա
Գ Բ Թագ․ Ը․ 17,
8 ծնաւ Աքիտովբը, Ու Գ Աքիտովբ
Դ Բ Թագ․ Ժե․ 27,
ծնաւ Սադովկը, ու Դ Սադովկ ծնաւ
9 Աքիմաասը, Եւ Աքիմաաս ծնաւ
Ազարիան, ու Ազարիա ծնաւ Յօ–
10 հանանը, Եւ Յօհանան ծնաւ Ա–
զարիան ․ ( ասիկայ էր որ Սողոմո–
Ե Գ Թագ․ Զ ; Բ Մն․ Գ,
նին Երուսաղէմը շինած Ե տաճա–
րին մէջ Զ քահանայութիւն ըրաւ ․ )
Զ Տես Բ Մն․ Իզ․ 17, 18,
11 Ու Է Ազարիա ծնաւ Ամարիան, և
12 Ամարիա ծնաւ Աքիտովբը, Ու Ա–
Է Տես Եզր․ Է․ 3,
քիտովբ ծնաւ Սադովկը ․ ու Սա–
13 դովկ ծնաւ Սեղղումը, Եւ Սեղ–
ղում ծնաւ Քեղկիան, ու Քեղկիա
14 ծնաւ Ազարիան, Եւ Ազարիա
Ը Նեեմ․ Ժա․ 11,
ծնաւ Ը Սարայիան, ու Սարայիա
15 ծնաւ Յովսեդեկը ։ Եւ Յովսեդեկ
Թ Դ Թագ․ Իե․ 18,
գերի գնաց, Թ երբոր Տէրը՝ Յուդան
ու Երուսաղէմը Նաբուգոդոնոսո–
րին ձեռքովը փոխադրեց ։
Ժ Ել․ Զ․ 16 ; Հմր 1,
16 Ղևիի որդիքը՝ Ժ Գերսոն, կա–
17 հաթ ու Մերարի էին ։ Ու Գեր–
սոնին որդւոցը անունները ասոնք
18 էին ․ Ղոբենի ու Սեմէի ։ Եւ կա–
հաթին որդիքը՝ Ամրամ, Իսա–
19 հառ, Քեբրոն ու Ոզիէլ էին ։ Մե–
րարիին որդիքը՝ Մոողի ու Մուսի

Ն. Ք. ԳՔ. Ժրր1300.

էին . և ասոնք էն Ղևտացւոց տոհ-
մերը իրենց հայրերուն համեմատ ։
20 Գերսոնին որդւոց . անոր որդին
Ղոբենի , անոր որդին Յեթ , անոր
Է Հմր 42.
21 որդին Զամմա , Անոր որդին Յո-
վաք , անոր որդին Ադդով , անոր
որդին Զարա , անոր որդին Յաթ-
րի էր ։
22 Կահաթին որդիքը . անոր որդին
Ամինադաբ , անոր որդին Կորխ ,
23 անոր որդին Ասիր , Անոր որդին
Եղկանա , անոր որդին Աբիասափ ,
24 անոր որդին Ասիր , Անոր որդին
Թաաթ , անոր որդին Ուրիէլ ,
անոր որդին Ոզիա , ու անոր որդին
25 Սաւուղ էր ։ Ու Եղկանային որ-
Ա Տն - Հմ. 35. 36.
26 դիքը՝ Ամեսայի , Աքիմօթ , Ո-
Եղկանա էին . Եղկանային որդի-
քը . անոր որդին Սուփի , ու անոր
27 որդին Նահաթ , Անոր որդին Ե-
ղիաբ , անոր որդին Յերոամ , անոր
28 որդին Եղկանա էր ։ Ու Սամուէ-
լին որդիքը , անոր անդրանիկը՝
Յովէլ , ու երկրորդը՝ Աբիա էր ։
Է Հմր 33. Թագ. Ը. 2.
29 Մերարիին որդիքը՝ Մոողի . ա-
նոր որդին Ղոբենի , անոր որդին
30 Սեմէի , անոր որդին Ոզա , Անոր
որդին Սամաա , անոր որդին Ան-
գիա , անոր որդին Ասայիա էր ։
Ժրր1280.
31 Եւ ասոնք էն որ Դաւիթ երգե-
ցողութեան պաշտօնին վրայ դրաւ
Ծ Գլ. Ժզ. 1.
Տէրոջը տանը մէջ՝ տապանակին
32 հանգստանալէն ետքը . Ու անոնց
պաշտօնը՝ ժողովքի խորանին առ-
ջևը օրհնութիւն երգել էր , մինչև
որ Սողոմոն Երուսաղէմի մէջ Տէրո-
ջը տունը շինեց . ու իրենց կարգին
համեմատ՝ իրենց պաշտօնին վրայ
33 կը կենային ։ Եւ իրենց որդիներո-
վը կեցողները ասոնք էն . Կահա-
թեանց որդիներէն երգեցող Եմա-
նը՝ Յովէլին որդին , որ էր՝ Սա-
34 մուէլին որդին , Որ էր՝ Եղկանային
որդին , որ էր՝ Յերոամին որդին ,
որ էր՝ Եղիէլին որդին , որ էր՝ Թո-
35 վային որդին , Որ էր՝ Սուփիին
որդին , որ էր՝ Եղկանային որդին ,
որ էր՝ Մաաթին որդին , որ էր՝
36 Ամեսայիին որդին , Որ էր՝ Եղկա-
նային որդին , որ էր՝ Յովէլին որ-
դին , որ էր՝ Ազարիային որդին , որ
37 էր՝ Սոփոնիային որդին , Որ էր՝
Թաաթին որդին , որ էր՝ Ասիրին
Ա Եւ. Է. 24.
որդին , որ էր՝ Աբիասափին որ-
38 դին , որ էր՝ Կորխին որդին , Որ էր՝
Իսահառին որդին , որ էր՝ Կահա-
թին որդին , որ էր՝ Ղևիին որդին ,
39 որ էր՝ Իսրայէլին որդին էր . Եւ
անոր աջ կողմը կայնողը՝ իր եղ-
բայրը Ասափն էր . որ Ասափ՝
Բարաքիային որդին , որ էր՝ Սա-
40 մային որդին , Որ էր՝ Միքա-
յէլին որդին , որ էր՝ Բաասիա-

Ն. Ք. ԳՔ. Ժրր1280.

յին որդին , որ էր՝ Մեղքիային
41 որդին , Որ էր՝ Աթանիին որդին ,
որ էր՝ Զարային որդին , որ էր՝
42 Ադայիային որդին , Որ էր՝ Եթա-
նին որդին , որ էր՝ Զամմային որ-
43 դին , որ էր՝ Սեմէիին որդին , Որ էր՝
Յեթին որդին , որ էր՝ Գերսոնին
44 որդին , որ էր՝ Ղևիին որդին էր . Ու
անոնց եղբայրները՝ Մերարիին որ-
դիքը ձախ կողմը կը կայնէին . Ե-
թան՝ Կիսէային որդին , որ էր՝
Աբդիին որդին , որ էր՝ Մալուքին
45 որդին , Որ էր՝ Ասաբիային որդին ,
որ էր՝ Ամասիային որդին , որ էր՝
46 Քեղկիային որդին , Որ էր՝ Ամա-
սիին որդին , որ էր՝ Բանիին որ-
47 դին , որ էր՝ Սամերին որդին , Որ
էր՝ Մոողիին որդին , որ էր՝ Մու-
սիին որդին , որ էր՝ Մերարիին որ-
48 դին , որ էր՝ Ղևիին որդին էր ։ Ու
անոնց եղբայրները՝ Ղևտացիք Աս-
տուծոյ տանը խորանին ամէն ծա-
ռայութեանը նուիրուած էին ։
1444.
49 Բայց Ահարոն ու անոր որդիքը՝
ողջակէզի սեղանին վրայ ողջակէզ՝
Ղև. Ա. 9. Ել. Լ. 7.
ու խունկի սեղանին վրայ խունկ
կը մատուցանէին , սրբութեանց
սրբութիւնին ամէն գործը կատա-
րելով , ու Իսրայէլին համար քա-
ւութիւն ընելով , ան ամենուն
համեմատ՝ որ Աստուծոյ ծառան
50 Մովսէս պատուիրեր էր ։ Եւ Ա-
հարոնին որդիքը ասոնք էին . Անոր
որդին Եղիազար , անոր որդին Փե-
51 նէհէս , անոր որդին Աբիսուա , Ա-
նոր որդին Բոկկի , անոր որդին Ո-
52 զի , անոր որդին Զարիա , Անոր որ-
դին Մարիօթ , անոր որդին Ամա-
53 րիա , անոր որդին Աքիտովբ , Ա-
նոր որդին Սադովկ , անոր որդին
Աքիմաաս ։
54 Եւ Կահաթի տոհմին՝ Ահարոնի
Յես. ԻԱ.
որդւոցը բնակութիւնները ասոնք
էին , իրենց գեղերովը ու իրենց
սահմաններովը . քանզի ան վիճա-
55 կը անոնց եղաւ ։ Եւ Յուդայի
Յես. ԻԱ. 11. 12.
երկրին մէջ Քեբրոնը՝ ու անոր
շրջակայ արուարձանները անոնց
56 տուին . Բայց ան քաղաքին ար-
Յես. ԺԴ. 13. ԺԵ 13.
տերը ու անոր գեղերը՝ Յեփոնեան
57 Քաղեբին տուին ։ Եւ Յուդայի
քաղաքներէն՝ Ահարոնի որդւոցը
Յես. ԻԱ. 13.
Քեբրոնը տուին ( որ ապաստանի
քաղաք էր ), ու Լեբնան՝ իր ա-
րուարձաններովը , և Յաթիրը ու
Եսթեմովը՝ իր արուարձաններովը ,
58 Եւ Քիլէնը՝ իր արուարձաններո-
Յես. ԻԱ. 15 Կոչուի Քողոն.
վը , ու Դաբիրը՝ իր արուարձան-
59 ներովը , Եւ Ասանը՝ իր արուար-
Յես. ԻԱ. 16 Կոչուի Ային.
ձաններովը , ու Բեթսամիւսը՝ իր ա-
60 րուարձաններովը . Եւ Բենիամինի
Յես. ԻԱ. 18 Կոչուի Գաղմոն.
ցեղէն Գաբան՝ իր արուարձաննե-
րովը , ու Գաղեմէթը՝ իր արուար-

Ն. Ք. Ծ. 1444

ժաններովը, և Անաթոթը՝ իր
արուարձաններովը. անոնց տոհ-
մերուն ամէն քաղաքները՝ տասն-
ուիրեք քաղաք էին։

ղ Հմր 66։

61 Ու աս ղցեղին տոհմերէն մնացած
Կահաթի որդւոցը՝ Մանասէին կէս
ցեղէն՝ դվիճակով տասը քաղաք
տրուեցան։

դ Յես. իա. 5։

62 Ու Գերսոնի որդւոցը՝ իրենց
տոհմերուն համեմատ՝ Իսաքարի
ցեղէն, Ասերի ցեղէն, ու Նեփ-
թաղիմի ցեղէն, ու Բասանի մէջ
բնակող Մանասէի ցեղէն՝ տասնու-
իրեք քաղաք տրուեցան։

63 Մերարիի որդւոցը՝ իրենց տոհ-
մերուն համեմատ՝ Ռուբէնի ցե-
ղէն, ու Գաթի ցեղէն, և Զաբու-
ղոնի ցեղէն՝ վիճակով Հտասուեր-
կու քաղաք տրուեցան։

ե Յես. իա. 7, 34։

64 Ու Իսրայէլի որդիքը աս քա-
ղաքները իրենց արուարձաններովը
65 Ղևտացիներուն տուին։ Եւ Յու-
դայի որդւոցը ցեղէն, ու Շմաւո-
նի որդւոցը ցեղէն, ու Բենիամինի
որդւոցը ցեղէն՝ վիճակով՝ աս ա-
նունով յիշուած քաղաքները
66 տուին։ Եւ զԿահաթի որդւոցը
մնացած տոհմերուն կալուածքի քա-
67 ղաքները Եփրեմի ցեղէն էր. էՈւ
անոնց՝ Եփրեմի լեռանը վրայ Սիւ-
քէմը տուին, (որ ապաստանի
քաղաքներէն էր,) ու անոր ա-
րուարձանները, և Գազերը՝ իր ա-
68 րուարձաններովը, Ու ԼՅեկմամը՝
իր արուարձաններովը, և Բեթո-
69 րոնը՝ իր արուարձաններովը, Ու
Այեղոնը՝ իր արուարձաններովը,
և Գեթրեմոնը՝ իր արուարձաննե-
70 րովը. Ու Մանասէի կէս ցեղէն՝
Անէրը՝ իր արուարձաններովը, և
Յեբղաամը՝ իր արուարձաններովը՝
Կահաթի որդւոցը մնացած տոհմին
տրուեցան։

զ Հմր 61։

է Յես. իա. 21։

Լ Տե՛ս Յես. իա. 22-35։

71 Գերսոնի որդւոցը՝ Մանասէի կէս
ցեղին տոհմէն՝ Բասանի մէջ Գող-
ղանը՝ իր արուարձաններովը, ու
Աստարովթը՝ իր արուարձաններո-
72 վը. Եւ Իսաքարի ցեղէն՝ Կադէսը՝
իր արուարձաններովը, Դաբարա-
73 թը՝ իր արուարձաններովը, Ու
Ռամովթը՝ իր արուարձաններովը,
և Անամը՝ իր արուարձաններովը.
74 Ու Ասերի ցեղէն՝ Մասաղը՝ իր ա-
րուարձաններովը, և Աբդոնը՝ իր ա-
75 րուարձաններովը, Ու Հուկոկը՝ իր
արուարձաններովը, և Րոոբը՝ իր
76 արուարձաններովը. Ու Նեփթա-
ղիմի ցեղէն Գալիլեայի մէջ՝ Կադէ-
սը՝ իր արուարձաններովը, և Համ-
մոնը՝ իր արուարձաններովը, ու
Կարիաթեմը՝ իր արուարձաններո-
վը տրուեցան։
77 Եւ մնացածներուն՝ այսինքն Մե-
րարիի որդւոցը՝ Զաբուղոնի ցեղէն
Ռեմմոնը՝ իր արուարձաններովը,
Թաբօրը՝ իր արուարձաններովը.
78 Ու Երիքովի Յորդանանու անդիի
կողմը՝ Յորդանանու արևելեան
կողմը՝ Ռուբէնի ցեղէն՝ անապատի
մէջ Բոսորը՝ իր արուարձաններովը,
ու Յասսան՝ իր արուարձաններովը,
79 Եւ Կադեմօթը՝ իր արուարձաննե-
րովը, ու Մեփայաթը՝ իր արուար-
80 ձաններովը. Եւ Գաթի ցեղէն՝
Գաղաադի մէջ Ռամովթը՝ իր ա-
րուարձաններովը, ու Մանայիմը՝
81 իր արուարձաններովը, Ու Եսեբո-
նը՝ իր արուարձաններովը, և Յա-
զէրը՝ իր արուարձաններովը տրուեցան։

## ԳԼ. Է

1 Իսաքարի, 6 Բենիամինի, 13 Նեփթաղիմի, 14 Մանասէի, 20, 24 ու Եփրեմի որդիքը։ 21 Եփրեմին կրած նեղութիւնը Գեթի մարդոցմէ։ 23 Բարիա կը ծնանի անոր։ 28 Եփրեմեանց բնակութիւնները։ 30 Ասերի որդիքը։

1 Ու Իսաքարի որդիքը՝ աԹովղա, 1400
ու Փուա, և Յասուբ ու Սամ-
2 րոն՝ չորս էին։ Եւ Թովղային որ-
դիքը՝ Ոզի, ու Հռափայիա, և
Յերիէլ, ու Յեմայի, և Յեփսամ,
ու Սամուէլ՝ իրենց հօրը Թովղա-
յին տանը իշխանները, և իրենց
ազգին մէջ զօրաւոր կտրիճներ էին.
Դաւիթին օրերը՝ բանոնց թիւը
քսանուերկու հազար վեց հարիւր
3 էր։ Եւ Ոզիին որդիքը՝ Յեզերիա,
ու Յեզերիային որդիքը՝ Միքայէլ,
և Աբդիա, ու Յովէլ և Յեսիա՝
հինգ էին, և ամէնն ալ իշխաններ
4 էին. Ու անոնց հետ՝ անոնց ցեղին
ու ազգատոհմին մէջ պատերազմի
շարուող երսունուվեց հազար զօրք
կար. քանզի անոնց կնիկները ու
5 որդիները շատուոր էին։ Եւ անոնց
եղբայրները Իսաքարին բոլոր տոհ-
մերուն մէջ զօրաւոր կտրիճներ ըլ-
լալով՝ իրենց ազգահամարին համե-
մատ՝ ամէնը ութսունուեօթը հա-
զար էին։
6 գԲենիամինի որդիքը՝ Բաղա, Բո-
7 քոր ու Յեդիէլ՝ իրեք էին։ Եւ
Բաղային որդիքը՝ Եսբօն, Ոզի,
Ոզիէլ, Յերիմովթ ու Իրի՝ իրենց
ազգատոհմին իշխանները և զօրա-
ւոր կտրիճները՝ հինգ էին. և անոնց
ազգահամարին մէջ գրուածները՝
քսանուերկու հազար երսունուչորս
8 հոգի էին։ Ու Բոքորին որդիքը՝
Զամիրա, Յովաս, Եղիազար, Ե-
ղիովէնայի, Ամրի, Յերիմովթ,
Աբիա, Անաթովթ, ու Գաղեմէթ
էին. ասոնք ամէնը Բոքորին որ-
9 դիքն էին, Եւ անոնց ազգահա-
մարին մէջ՝ իրենց ազգատոհմերուն
իշխանները՝ և զօրաւոր կտրիճներ

Ն. Ք. Ծ. 1444

ա Ծն. խզ. 13։ Թու. իզ. 23։

բ Բ Թագ. իդ. 1, 2։ Գլ. իէ. 1։

գ Ծն. խզ. 21։ Թու. իզ. 38։ Գլ. ը. 1, ա։

Ն․ Ք․ ԶՔ․ 1400, Ա

ըլլալով՝ քսան հազար երկու հարիւր
10 հոգի էր ։ Եւ Յեդիհելի որդին՝
Բաղհան, ու Բաղհանին որդիքը՝
Յեուս, Բենիամին, Աւովդ, Քա–
նանա, Զեթան, Թարսիս ու Ա–
11 քիսաար էին ։ Ասոնք ամէնը Յե–
դիհելին որդիքը՝ իրենց տոհմերուն
իշխանները՝ ու զօրաւոր կտրիճներ
էին․ ու տասնուեօթը հազար եր–
կու հարիւր պատերազմի ելլող մար–
12 դիկ էին ։ Եւ ա Սուփիմ ու Ոփիմ՝
Իրի որդիքն էին, Հուսիմն ալ բ Ա–
քերին որդին էր ։
13 Նեփթաղիմի որդիքը՝ Յասիէլ,
Գունի, Յասեր ու գ Սեղղում՝
Բաղհային որդիքն էին ։
14 Մանասէի որդիքը՝ Ասրիէլ, որ
զանիկայ իր կինը ծնաւ․ ու անոր
Ասորի հարճը՝ Գաղաադին հայրը
15 Մաքիրը ծնաւ ։ Եւ Մաքիր իրեն
կնիկ առաւ Ոփիմին ու Սուփիմին
քոյրը՝ որուն անունը Մաաքա էր,
— ու երկրորդին անունը Սալպա–
ադ էր․ և Սալպաադին աղջիկներ
16 ծնան ։ Ու Մաքիրին կնիկը Մաա–
քա որդի մը ծնաւ, և անոր անու–
նը Փարէս կոչեց․ ու անոր եղբօրը
անունը Սարէս էր, և անոր որդի–
17 ները՝ Ուղամ ու Րոկոմ էին ։ Եւ
Ուղամի որդին՝ ե Բեդան էր․ Մա–
նասէի որդւոյն Մաքիրի որդւոյն
Գաղաադին որդիքը ասոնք էին ։
18 Ու անոր քոյրը Մաղեքեթ ծնաւ
Եսուդը, զ Աբիեզերը ու Մաալան ։
19 Եւ Սեմիդային որդիքը՝ Աքիան,
Սիւքեմ, Ղակէի ու Անիամ էին ։
20 Ու է Եփրեմի որդիքը՝ Սուտաղա,
(և անոր որդին Բարադ, ու անոր
որդին Թաաթ, ու անոր որդին
Եղիադա, և անոր որդին Թաաթ,
21 Ու անոր որդին Զաբադ, և անոր
որդին Սուտաղա,) նաև Եզեր, ու
Եղիադ էին․ ու զանոնք՝ ան երկրին
մէջ ծնած Գեթացիք մեռցուցին․
քանզի անոնց անասունները առնե–
22 լու իջան ։ Եւ անոնց հայրը Եփ–
րեմ՝ շատ օրեր սուգ բռնեց․ ու
անոր եղբայրները զանիկայ մխիթա–
23 րելու գացին ։ Եւ անիկայ իր կըն–
կանը մտաւ․ ու անիկայ յղանալով՝
որդի մը ծնաւ․ և անոր անունը
* Բարիա կոչեց․ վասն զի իր տանը
24 վրայ չարիք եկած էր ։ Ու անոր
աղջիկը Սէէրա էր․ ասիկայ՝ վարի
ու վերի Բեթորոնը, ու Ոզան սէէ–
25 րան շինեց ։ Եւ անոր որդին Հը–
ռափէ, ու Հռասէփ, ու անոր որ–
դին Թաղէ, և անոր որդին Թա–
26 ան, Անոր որդին Ղաադան, անոր
որդին Ամիուդ, անոր որդին Եղի–
27 սամա, Անոր որդին ծ Նաւէ, ու
28 անոր որդին Յեսու էր ։ Եւ անոնց
կալուածքները ու բնակութիւննե–
րը ասոնք էին․ Բեթէլը ու անոր գե–
ղերը, ու արևելեան կողմն է Նաա–
րանը, և արևմտեան կողմն Գա–
զերը ու անոր գեղերը, և Սիւքէմը
ու անոր գեղերը, մինչև Գազա ու
29 անոր գեղերը․ Եւ ը Մանասէի որ–
դւոյը սահմաններուն քովը՝ Բեթ–
սանը ու անոր գեղերը, Թանաքը
ու անոր գեղերը, ի Մակեդդովը ու
անոր գեղերը, Դովրը ու անոր գե–
ղերը․ Իսրայէլի որդւոյն Յովսեփին
որդիքը ասոնց մէջ կը բնակէին ։
30 թ Ասերի որդիքը՝ Յեմնա, Յե–
սուա, Յեսուի ու Բարիա, և անոնց
31 քոյրը Սարա էր ։ Ու Բարիային
որդիքը՝ Քաբեր ու Մեղքիէլ էին․
32 ասիկայ Բարսայիթի հայրն էր․ Ու
Քաբեր ծնաւ Յափաղէթը, Սով–
մերը, և Քովթամը, ու անոնց
33 քոյրը Սովղան ։ Ու Յափաղէթին
որդիքը՝ Փասաք, Բամայէլ ու Ա–
սուաթ էին․ Յափաղէթին որդիքը
34 ասոնք էին ։ Եւ Սովմերին որդի–
քը՝ Աքի, Հռաոգա, Ոբա ու Ա–
35 րամ էին ։ Ու անոր եղբօրը Հե–
լեմին որդիքը՝ Սովփա, Յամանա,
36 Սելէս և Ամաղ էին ։ Սովփային
որդիքը՝ Սուա, Առնափար, Սու–
37 աղ, Բարի, Յեմրա, Բասար,
Ովդ, Սամմա, Սաղիսա, Յեթրան
38 և Բէերա ։ Ու Յեթերին որդիքը՝
Յեփոնէ, Փասփա և Արա էին ։
39 Ու Ովղային որդիքը՝ Արահ, Անիէլ
40 ու Հռասիա էին ։ Ասոնք ամէնը
Ասերի որդիքն էին, ու իրենց ազ–
գատոհմերուն իշխաններն էին,
ընտիր ու զօրաւոր կտրիճներ, և
գլխաւոր իշխաններ էին․ ու անոնց
ազգահամարին մէջ պատերազմա–
կան զօրաց թիւը քսանուվեց հա–
զար մարդ էր ։

ԳԼ․ Ը

1 Բենիամինի որդիքը, ու անոր գլխաւոր մար–
դիկները ։ 33 Սաւուղին ու Յովնաթանին ազ–
գաբանութիւնը ։

1 Եւ Բենիամին ծնաւ իր անդրանիկը
ա Բաղան, երկրորդը՝ Ասբէլը,
2 երրորդը՝ Աարան, Չորրորդը՝ Նո–
3 վան, ու հինգերորդը՝ Ռափան ։ Եւ
Բաղային որդիքը՝ բ Ադար, Գե–
4 րա, Աբիուդ, Աբիսուա, Նէե–
5 ման, Աքուք, Գերա, գ Սուփան և
6 Քիրամ էին ։ Ու Աքուդի որդիքը
ասոնք էին, ևս Գաբայի բնակչացը
իշխանները ասոնք էին, ու զանոնք
7 դ Մանաքաթ փոխադրեցին ։ Եւ
Նէեման, ու Աքիա, ու զանոնք
փոխադրողը Գերա․ ասիկայ Ոզան
8 ու Աքիուդը ծնաւ ։ Եւ Սաարիմ
զանոնք խրկելէն ետքը՝ Մովաբի
երկրին մէջ զաւակներ ծնաւ․ ու ա–
նոր կնիկները՝ Հուսիմ ու Բաարա

Ն․ Ք․ ԶՔ․ 1400, Ա

ա Թուոց․ իզ․ 39 Սուփամ ։
բ Թուոց․ իզ․ 38 Աքիրամ ։
գ Ծն․ խզ․ 24 Սիղեմ ։
ե Ա Թագ․ ժբ․ 11 ։
զ Թուոց․ իզ․ 30 Իեզեր ։
է Թուոց․ իզ․ 35 ։
* Այսինքն՝ չարիքի մէջ ։
ծ Թուոց․ ժգ․ 9, 17 ։

Ն․ Ք․ ԶՔ․ 1400, Ա

է Յես․ ժզ․ 7 ։
ը Յես․ ժէ․ 7 ։
ի Յես․ ժէ․ 11 ։
թ Ծն․ խզ․ 17 ։ Թուոց․ իզ․ 44 ։
ա Ծն․ խզ․ 21 ։ Թուոց․ իզ․ 38 ։ Գլ․ է․ 6 ։
բ Կամ՝ Արեդ․ Ծն․ խզ․ 21 ։
գ Թուոց․ իզ․ 39 Սուփամ ։ Տես Գլ․ է․ 12 ։
դ Գլ․ բ․ 52 ։

Ն. Ք. ԴՔ. 1400, ա

9 էին ։ Եւ անոր կնիկէն Հոդեսէն՝
Յոբաբը, Սաբիան, Մեսան, Մեղ-
10 քամը, Յէուսը, Սեքիան ու Մար-
ման ծնաւ. ասոնք անոր որդիքը՝
11 ու տոհմերու իշխաններ էին ։ Եւ
Հուսիմէն՝ Աբիտովբը ու Եղբաաղը
12 ծնաւ ։ Ու Եղփաաղին որդիքը՝
Եբեր, Միսաամ ու *Սամեր, (ա-
սիկայ Ովնովը, Ղովդը՝ ու անոր
13 գեղերը շինեց,) Եւ Բարիա ու Սե-
մա էին. ասոնք Այեղոնի բնակող
տոհմերուն իշխաններն էին. ու ա-
սոնք վռընտեցին Գեթի բնակիչնե-
14 րը, Եւ †Աքիով, Սովսեկ, Յե-
15 րիմովթ, Զաբաթիա, Արադ,
16 Եդեր, Միքայէլ, Յեսփա ու
Յովքա՝ Բարիայի որդիքն էին ։
17 Եւ Զաբադիա, Մեսուղամ, Ա-
18 զակի, Քաբեր, Յեսամարի, Յեզ-
լիա և Յոբաբ՝ Եղփաաղի որդիքն
19 էին ։ Եւ Յակիմ, Զեքրի, Զաբ-
20 դի, Եղիենայի, Սաղթի, Եղիէլ,
21 Ադայիա, Բարեա և Սամարաթ՝
22 Սեմէիի որդիքն էին ։ Ու Յես-
23 փան, Եբեր, Եղիէլ, Աբդոն,
24 Զեքրի, Անան, Անանիա, Եղամ,
25 Անաթովթիա, Յեփադիա ու
Փանուէլ՝ Սովսեկի որդիքն էին ։
26 Եւ Սամսարի, Սաարիա, Գո-
27 թողիա, Յարասիա, Եղիա և
Զեքրի՝ Յերովամի որդիքն էին ։
28 Ասոնք իրենց տոհմերուն համեմատ
նահապետներ ու իշխաններ էին,
ու Երուսաղեմի մէջ կը բնակէին ։
29 Եւ ‡Գաբաւոնի մէջ՝ Գաբաւոնի
հայրը կը բնակէր. ու անոր կնկանը
30 անունը Մաաքա էր. Եւ անոր
անդրանիկ որդին Աբդոն էր. ետքը
Սուր, Կիս, Բաաղ, Նադաբ,
31 Գեդովր, Աքիով ու §Զաքար էին ։
32 Եւ Մակեղօթ ծնաւ ‖Սամաա. ու
ասոնք ալ իրենց եղբայրներուն դի-
մացը՝ Երուսաղեմի մէջ իրենց եղ-
բայրներուն հետ բնակեցան ։
33 Եւ ¶Ներ ծնաւ Կիսը, ու Կիս
ծնաւ Սաւուղը, և Սաւուղ ծնաւ
Յովնաթանը, Մեղքիսաւէն, Ա-
34 բինադաբը ու Էսբաաղը ։ Եւ
Յովնաթանի որդին **Մերիբաաղ
էր. ու Մերիբաաղ ծնաւ ††Միքան ։
35 Եւ Միքային որդիքը՝ Փիթոն,
Մելէք, Թարէ ու Աքազ էին ։
36 Եւ Աքազ ծնաւ Յովադան, ու
Յովադա ծնաւ Գաղեմէթը, Ազա-
մօթը ու Զամբրին. և Զամբրի
37 ծնաւ Մոսան. Ու Մոսա ծնաւ
Բանաան. անոր որդին ‡‡Ռափիա,
անոր որդին Եղեասա, ու անոր որ-
38 դին Եսէլ էր ։ Ու Եսէլ վեց որ-
դի ունէր. և անոնց անունները ա-
սոնք են. Եզրիկամ, Բոքերու,
Իսմայէլ, Սաարիա, Աբդիա ու
Անան. ասոնք ամէնը՝ Եսէլին որ-

* Կամ՝ Սամէդ ։
† Կամ՝ անոր եղբայրները ։
‡ Գլ. Թ. 35 ։
§ Գլ. Թ. 37 Կոչուած Զաքարիա ։
‖ Գլ. Թ. 38 Կոչուած Սամաամ ։
¶ Ա Թագ. ԺԴ. 51 ։
** Բ Թագ. Բ. 8 Կոչուած Յեբուսթէ ։
†† Բ Թագ. Դ. 4 ։ Թ. 6, 10 Կոչուած Մեմփիբոսթէ ։
†† Բ Թագ. Թ. 12 ։
‡‡ Գլ. Թ. 43 Կոչուած Ռափայիա ։

39 դիքն էին ։ Եւ անոր եղբօրը՝ Ե-
սեկին որդիքը՝ անդրանիկը Ուղամ,
երկրորդը Յեուս, երրորդը Եղի-
40 փաղետ էր ։ Եւ Ուղամին որդիքը
զօրաւոր կտրիճներ ու աղեղնաւոր-
ներ էին. և անոնք շատ որդիներ
ու թոռներ ունէին, հարիւր յի-
սունի չափ. ասոնք ամէնը Բենիա-
մինի որդւոցմէ էին ։

Ն. Ք. ԴՔ. 1400, ա

## ԳԼ. Թ

1 Իսրայէլի ու Յուդայի արձանագրութիւնը. 2 Իսրայէլացիք. 10 քահանաները. 14 Ղեւտացիները ու Նաթանայիմները՝ որոնք Երուսաղեմի մէջ բնակեցան ։ 27 Ղեւտացւոց մէկ քանիներուն պաշտօնը ։ 35 Սաւուղին ու Յովնաթանին ազգաբանութիւնը ։

1 Այսպէս *բոլոր Իսրայէլացիք ար-
ձանագրուած էին. և ահա Իս-
րայէլի ու Յուդայի թագաւորաց
գրքին մէջը գրուած էին. և իրենց
անօրէնութեանը համար Բաբելոն
գերի տարուեցան ։
2 †Եւ անոնց կալուածքներուն մէջ՝
անոնց քաղաքներուն մէջ առաջ
բնակողները՝ Իսրայէլացիներէն,
քահանաներէն, Ղեւտացիներէն և
3 ‡Նաթանայիմներէն ոմանք էին ։ Ու
§Երուսաղեմի մէջ՝ Յուդայի որ-
դւոցմէ, Բենիամինի որդւոցմէ,
Եփրեմի ու Մանասէի որդւոցմէ
4 բնակեցան. Յուդայի որդւոյն Փա-
րեսին որդիներէն՝ Բանիի որդւոյն
Իմրիի որդւոյն Ամրիի որդւոյն Ամի-
5 ուդին որդին Ութային ։ Եւ ‖Սիլո-
նացիներէն՝ անոր անդրանիկը Ասա-
6 յիա, ու անոր որդիքը ։ Եւ Զա-
րայի որդւոցմէ՝ Յեհիէլ, ու անոնց
եղբայրները՝ վեց հարիւր իննսուն
7 հոգի ։ Ու Բենիամինի որդւոցմէ՝
Ասանուայի որդւոյն Ովդուիայի որ-
դւոյն Մեսուղամին որդին Սալլու ։
8 Եւ Յերովամին որդին Յեբնիա, ու
Մաքրիի որդւոյն Ոզիին որդին Է-
լա, ու Յեբնիայի որդւոյն Ռագուէ-
լի որդւոյն Սափատիային որդին
9 Մեսուղամ, Եւ անոնց եղբայրնե-
րը իրենց ցեղերուն համեմատ՝ ինը
հարիւր յիսունուվեց հոգի. աս բո-
լոր մարդիկները իրենց տոհմերուն
նահապետներն էին ։
10 ¶Ու քահանաներէն՝ Յեդայիա,
11 Յովարիբ, ու Յաքին, Եւ Աստու-
ծոյ տանը վերակացու՝ Աքիտովբի
որդւոյն Մարիօթի որդւոյն Սա-
դովկի որդւոյն Մեսուղամի որդւոյն
12 Քեղկիային որդին Ազարիան, Ու
Մեղքիայի որդւոյն Փասուրի որ-
դւոյն Յերովամին որդին Ադայիան,
ու Եմմերի որդւոյն Մեսեղամօթի
որդւոյն Մեսուղամի որդւոյն Եզի-
րայի որդւոյն Ադիելին որդին Մա-
13 սէն, Եւ անոնց եղբայրները իրենց
տոհմերուն իշխանները՝ հազար եօ-

1200, ա
* Եզր. Բ. 59 ։
Իրր 536
† Եզր. Բ. 70 ։ Նեեմ. Է. 73 ։
‡ Յես. Թ. 27 ։ Եզր. Բ. 43 ։ Ը. 20 ։
§ Նեեմ. ԺԱ. 1 ։
‖ Կամ՝ Սելոմնաններէն՝
¶ Նեեմ. ԺԱ. 10, ա ։

Ն․փ․զք․ 1200, ա

թը հարիւր վաթսուն զօրաւոր
կտրիճներ՝ Աստուծոյ տանը գործ-
քին ծառայութեանը մէջ էին ։
14 Ու Ղևտացիներէն՝ Մերարիի որ-
դւոցմէն՝ Ասաբիայի որդւոյն Եզ-
րիկամի որդւոյն Ասուբին որդին
15 Սեմայիա , Եւ Բակբակար , ու Ա-
րէս , և Գաղաղ , ու Ասափի որ-
դւոյն Զէքրիի որդւոյն Միքային
16 որդին Մաթանիան , Եւ Իդիթունի
որդւոյն Գաղաղի որդւոյն Սեմա-
յիային որդին Աբդիան , ու Եղկա-
նայի որդւոյն Ասային որդին Բա-
րաքիան , որ Նետոփաթացւոց գե-
17 ղերուն մէջ կը բնակէր ։ Ու դըռ-
նապանները՝ Սեղղում , Ակկուբ ,
Տեղմոն , և Աքիման , ու անոնց
եղբայրները . անոնց վերակացուն
* կամ՝ հիմա
18 Սեղղումն էր ։ Մինչև *հոս թա-
գաւորին դուռը կը կենէին՝ որ ա-
րևելեան կողմն է . ասոնք Ղևիի
որդւոցը բանակներուն դռնա-
19 պաններն էին ։ Եւ Կորխի որդւոյն
Աբիասաբի որդւոյն Կովրէին որդին
Սեղղումը , ու անոր եղբայրները՝
անոր հօրը տունէն եղող Կոր-
խացիները՝ ծառայութեան գործ-
քին վրայ էին , ու խորանին սեմե-
րուն պահպանութիւնը կ'ընէին . և
անոնց հայրերը Տէրոջը բանակին
մէջ՝ դրան պահպանութիւնը կ'ը-
Ղ Թուոց Իե․ 6։
20 նէին ։ Ու Եղիազարի որդին Փե-
նէհէսը առաջ անոնց վրայ իշխան
21 էր , ու Տէրը անոր հետ էր ։ Մա-
սեղամիայի որդին Զաքարիան՝ ժո-
ղովքի խորանին դրանը պահապանն
22 էր ։ Դռներուն մէջը պահպանու-
թիւն ընելու համար բոլոր դռնապան
ընտրուածները՝ երկու հարիւր
տասուերկու հոգի էին . ասոնք ի-
րենց գեղերուն մէջը ազգահամարի
մէջ գրուեցան . Դաւիթը ու Սա-
Ա Թագ․ Թ․ 9։ Ը Գլ․ Իզ․ 1, 2։
մուէլ տեսանողը զանոնք իրենց
23 պաշտօնին վրայ դրին ։ Եւ անոնք
ու անոնց որդիքը՝ Տէրոջը տանը՝
այսինքն խորանի տանը դռներուն
քովը փոխանակաւ պահպանութիւն
24 կ'ընէին ։ Դռնապանները չորս կող-
մերը կը կայնէին . արևելեան , ա-
րևմտեան , հիւսիսային ու հարա-
25 ւային կողմերը ։ Եւ գեղերու մէջ
եղող անոնց եղբայրները ատեն ա-
Բ Դ Թագ․ Ժա․ 5։
տեն կուգային , ու եօթնական
26 օր անոնց հետ կը կենային ։ Քանզի
ան Ղևտացիները՝ ան չորս գլխա-
ւոր դռնապանները միշտ իրենց պաշ-
տօնին մէջ՝ սենեակներուն վրայ ու
Աստուծոյ տանը գանձերուն վրայ
27 էին . Ու գիշերը Աստուծոյ տանը
բոլորտիքը կը կենային . քանզի
պահպանութիւնը անոնց վրայ էր .
և ամէն առտու զանիկայ անոնք
28 պիտի բանային ։ Ու պաշտօնի ա-

Ն․փ․զք․ 1200, ա

նօթներուն վերակացուները ա-
նոնցմէ էին . քանզի զանոնք համ-
րանքով ներս կը բերէին , ու
համրանքով դուրս կը հանէին ,
29 Եւ ուրիշ ամաններուն , ու սրբա-
րանին բոլոր գործիքներուն , և նա-
շիհին , ու գինիին , ու եղին , և
կնդրուկին , ու համեմներուն վե-
30 րակացուները անոնցմէ էին ։ Եւ
ծ համեմներուն բաղադրութեամբը
եղը շինողները՝ քահանայից որդի-
Ծ Ել․ Լ․ 23, ա։
31 ներէն էին ։ Ու Ղևտացիներէն՝
Կորխացի Սեղղումին անդրանիկը
Մատաթիան՝ տապակի գործքին
Է Ղև․ Բ․ 5։ Զ․ 21։ Ե Ղև․ Իդ․ 8։
32 վերակացուն էր ։ Եւ առաջաւո-
րութեան հացին վերակացուները
անոնց եղբայրներէն՝ Կահաթացւոց
որդիներէն էին , որ զանոնք շա-
բաթէ շաբաթ պատրաստեն ։
33 Ու ասոնք՝ այսինքն Ղևտացւոց
տոհմերուն իշխանները՝ երգեցող-
ներ էին . և սենեակներուն մէջը կը
Ի Գլ․ Զ․ 31։ Իե․ 1։
նստէին , ու ուրիշ գործ մը չու-
նէին . քանզի ցորեկ ու գիշեր աս
34 պաշտօնովս զբաղած էին ։ Աս Ղև-
տացւոց տոհմերուն իշխանները՝ ի-
րենց ցեղերուն համեմատ իշխաններ
էին . անոնք Երուսաղէմի մէջ կը
բնակէին ։
35 Եւ Գաբաւոնի մէջ՝ Գաբաւոնին
հայրը՝ Յէիէլը կը բնակէր . ու ա-
նոր կնկանը անունը ծ Մաաքա էր .
Ծ Գլ․ Ը․ 29։
36 Եւ անոր անդրանիկ որդին Աբդօն
էր . ետքը Սուր , Կիս , Բաաղ ,
37 Ներ , Նադաբ , Գեդովր , Աքիով ,
38 Զաքարիա և Մակեղօթ էին ։ Ու
Մակեղօթ ծնաւ Սամաամը . ու ա-
սոնք ալ իրենց եղբայրներուն դի-
մացը՝ Երուսաղէմի մէջ իրենց եղ-
բայրներուն հետ բնակեցան ։
39 Եւ Ներ ծնաւ Կիսը , ու Կիս
Կ Գլ․ Ը․ 33։
ծնաւ Սաւուղը , և Սաւուղ ծնաւ
Յովնաթանը , Մեղքիսաւէն , Ա-
40 բինադաբը ու Եսբաաղը ։ Եւ
Յովնաթանին որդին Մերիբաաղ
էր . ու Մերիբաաղ ծնաւ Միքան ։
41 Եւ Միքային որդիքը՝ Փիթօն ,
42 Մելէք , Թարէա ու Աքազ էին ։ Եւ
Հ Գլ․ Ը․ 35։
Աքազ ծնաւ Յովադան , ու Յովա-
դա ծնաւ Գաղեմէթը , Ազմօթը
ու Զամբրին . և Զամբրի ծնաւ
43 Մոսան . Ու Մոսա ծնաւ Բանաան .
անոր որդին Ռափայիա , անոր որ-
դին Եղէասա , ու անոր որդին Ե-
44 սէլ էր ։ Ու Եսէլ վեց որդի ունէր .
և անոնց անունները ասոնք են .
Եզրիկամ , Բոքերու , Իսմայէլ ,
Սաարիա , Աբդիա ու Անան . Եսէ-
լին որդիքը ասոնք էին ։

ԳԼ․ Ժ

1 Սաւուղին յաղթուիլը ու մեռնիլը ։ 8 Փղըշ-
տացիք Սաւուղին վրայ յաղթութեան հան-

Ն․ Ք․ ԴՔ․ 1056

դէմը կը կատարեն ։ 11 Գաղաադու Յաբիսի բնակիչներուն՝ Սաւուղին ու անոր որդւոցը ցուցուցած սէրը ։ 13 Սաւուղին մեղքը՝ որուն համար թագաւորութիւնը անկէ վերցաւ, ու Դաւիթին դարձաւ ։

ա Ա Թագ․ Լա․ 1․ 2։

1 Եւ [ա]Փղշտացիք Իսրայէլի հետ
պատերազմ ըրին. ու Իսրայէլի
մարդիկները Փղշտացւոց առջեւէն
փախան, ու Գեղբուէ լեռանը վրայ
2 [*]վիրաւորուած ինկան ։ Եւ Փղշ-
տացիք Սաւուղին ու անոր որդւո-
ցը ետեւէն հասան. ու Փղշտացիք
Սաւուղին որդիքը՝ Յովնաթանը,
[բ]Աբինադաբը ու Մեղքիսուէն զար-
3 կին ։ Եւ պատերազմը Սաւուղին
վրայ սաստկացաւ. ու աղեղնաւոր-
ները զանիկայ գտան. ու աղեղնա-
4 ւորներէն վիրաւորուեցաւ ։ Եւ
Սաւուղ իր կապարճակիրին ըսաւ.
Սուրդ քաշէ, ու անով զիս խոցէ.
չըլլայ որ աս անթլփատները գան,
ու զիս ծաղր ընեն. բայց կապար-
ճակիրը չուզեց. քանզի շատ վախ-
ցաւ ։ Եւ Սաւուղ սուրը առաւ,
5 ու անոր վրայ ինկաւ ։ Եւ անոր
կապարճակիրը Սաւուղին մեռնիլը
տեսնելով՝ ան ալ իր սուրին վրայ
6 ինկաւ ու մեռաւ ։ Այսպէս մեռաւ
Սաւուղ՝ ու անոր իրեք որդիքը.
անոր բոլոր տունն ալ մէկտեղ մե-
ռաւ ։

* Կամ՝ ըսպաննուած

բ Ա Թագ․ ԺԴ․ 49 Իշ-բոսթ Յե-սուի ։

7 Ու հովիտին մէջը եղող բոլոր
Իսրայէլի մարդիկները՝ անոնց փախ-
չիլը, և Սաւուղին ու անոր որդւո-
ցը մեռնիլը տեսնելով, իրենց քա-
ղաքները թողուցին փախան. և
Փղշտացիք եկան, ու անոնց մէջը
բնակեցան ։
8 Եւ հետեւեալ օրը Փղշտացիք ե-
կան, որ մեռելները մերկացընեն.
ու Սաւուղը և անոր որդիները
Գեղբուէ լեռան վրայ ինկած գը-
9 տան. Ու զանիկայ մերկացուցին,
և անոր գլուխը ու զէնքերը առին.
ու Փղշտացւոց երկրին չորս կողմը՝
իրենց կուռքերուն ու ժողովուր-
դին՝ այս բաներուն աւետիսը տալու
10 համար մարդ խրկեցին ։ [գ]Եւ անոր
զէնքերը՝ իրենց աստուծոյն տունը
դրին, ու անոր գլուխը Դագոնի
տանը մէջ գամեցին ։

գ Ա Թագ․ Լա․ 10։

11 Եւ Գաղաադու Յաբիսի բոլոր
բնակիչները երբոր լսեցին ան ամէնը՝
որ Փղշտացիք Սաւուղին ըրած էին,
12 Բոլոր զօրաւոր մարդիկները ոտք ե-
լան, և Սաւուղին մարմինը ու ա-
նոր որդւոցը մարմինները վերցու-
ցին, և զանոնք Յաբիս բերին. և
անոնց ոսկորները Յաբիսի մէջ բե-
ւեկնիին տակը թաղեցին, ու եօթը
օր ծոմ պահեցին ։
13 Այսպէս մեռաւ Սաւուղ՝ Տէրոջը
դէմ ըրած ապստամբութեան մեղ-
քին համար. որովհետեւ [դ]Տէրոջը
խօսքը չպահեց, ու նաև վհուկ
փնտռեց [ե]անոր հարցընելու համար ։
14 Ու Տէրոջը չհարցուց. ուստի Տէրը
զանիկայ մեռցուց, ու [զ]թագաւո-
րութիւնը Յեսսէի որդւոյն Դաւի-
թին դարձուց ։

Ն․ Ք․ ԴՔ․ 1056

դ Ա Թագ․ ԺԳ․ 13։ ԺԵ․ 23։
ե Ա Թագ․ ԻԸ․ 7։
զ Ա Թագ․ ԺԵ․ 28։ Բ Թագ․ Գ․ 9, 10։ Ե․ 3։

## ԳԼ․ ԺԱ

1 Դաւիթ՝ բոլոր ժողովուրդին հաճութեամբը Քեբրոնի մէջ թագաւոր կ'ըլլայ. 4 Յովաբին քաջութեամբը Յեբուսացիներէն Սիոնին բերդը կ'առնէ ։ 10 Դաւիթին զօրաւոր մարդոցը անունները ։

1048

ա Բ Թագ․ Ե․ 1։

1 Եւ [ա]բոլոր Իսրայէլը Դաւիթին
քովը Քեբրոնի մէջ՝ ժողվուե-
ցան, ու ըսին. Ահա մենք քու ոս-
2 կորդ ու քու մարմինդ ենք ։ Եւ
ասկէ առաջ ալ երբոր Սաւուղը
թագաւոր էր, Իսրայէլը դուրս
հանողը ու ներս բերողը դուն էիր.
ու քու Տէր Աստուածդ քեզի ը-
սաւ. Իմ ժողովուրդս Իսրայէլը
դուն պիտի [բ]հովուես, ու իմ ժո-
ղովուրդիս Իսրայէլին վրայ դուն
3 իշխան պիտի ըլլաս ։ Եւ Իսրայէլի
բոլոր ծերերը Քեբրոն եկան թա-
գաւորին. ու Դաւիթ Քեբրոնի
մէջ՝ Տէրոջը առջեւ անոնց հետ
դաշնակցութիւն ըրաւ. ու [գ]զա-
նոնք Դաւիթը Իսրայէլի վրայ թա-
գաւոր օծեցին, ինչպէս որ Տէրը
[դ]Սամուէլին ձեռքովը խօսեր էր ։

բ Սաղ․ ՀԸ․ 71։
գ Բ Թագ․ Ե․ 3։
դ Ա Թագ․ ԺԶ․ 1, 12, 13։

4 Եւ Դաւիթ բոլոր Իսրայէլի հետ
[ե]Երուսաղէմ՝ այսինքն Յեբուս գը-
նաց. [զ]Ու հոն՝ ան երկրին բնակիչ-
5 ները՝ Յեբուսացիք կը բնակէին ։ Եւ
Յեբուսի բնակիչները Դաւիթին
ըսին. Հոս պիտի չմտնես. բայց
Դաւիթ առաւ Սիոնին բերդը,
(որ Դաւիթին քաղաքը կը կոչուի ։)
6 Ու Դաւիթ ըսաւ. Ով որ Յե-
բուսացիները առաջ զարնէ, անի-
կայ իշխան ու զօրավար պիտի ըլ-
լայ. և առաջ Շարուհեայի որդին
Յովաբը ելաւ, ու անիկայ զօրավար
7 եղաւ ։ Եւ Դաւիթ ան բերդին
մէջը բնակեցաւ. անոր համար
[է]անիկայ՝ Դաւիթին քաղաքը կո-
8 չուեցաւ ։ Ու Դաւիթ՝ քաղաքը
շինեց շուրջանակի՝ այսինքն Մելոնը
ու անոր շրջակայ տեղուանքը. ու
Յովաբ՝ քաղաքին մնացորդը նորո-
9 գեց ։ Եւ Դաւիթ երթալով կը
մեծնար, ու զօրաց Տէրը անոր
հետն էր ։

ե Բ Թագ․ Ե․ 6։
զ Դատ․ Ա․ 21։ ԺԹ․ 10։
է Բ Թագ․ Ե․ 7։

10 [ը]Եւ ասոնք են Դաւիթին գըլ-
խաւոր զօրաւորները, որոնք անոր
թագաւորութեանը համար անոր
օգնութիւն ըրին բոլոր Իսրայէլի
հետ՝ որ զանիկայ թագաւոր հաս-
տատեն, [թ]Տէրոջը Իսրայէլի վրա-
11 յով ըրած խօսքին համեմատ ։ Եւ
Դաւիթին զօրաւոր մարդոցը թիւը

ը Բ Թագ․ ԻԳ․ 8։
թ Ա Թագ․ ԺԶ․ 1, 12։

Ն. Ք. Գ. Ք. 1048

ասիկայ է . Հաքեմոնիի որդին
Ցեսբաամ՝ զօրավարներուն գլու-
խը , որ իր նիզակը իրեք հարիւր
մարդոյ վրայ վերցուց , ու մէկէն
զանոնք մեռցուց ։
12 Եւ անկէ ետքը՝ Աքուքացի Դով-
դային որդին Եղիազարը՝ որ իրեք
13 զօրաւորներէն էր . Ասիկայ երբոր
ժԱփեսդոմմինի մէջ Դաւիթին
հետն էր , Փղշտացիք հոն ժողվուե-
ցան պատերազմելու համար . և
արտի մը մէկ մասը գարիով լեցուն
էր . ու ժողովուրդը Փղշտացւոց
14 երեսէն փախաւ . Իսկ ասոնք ար-
տին մէջտեղը կայնեցան , և զանի-
կայ ազատեցին , ու Փղշտացիները
զարկին . և Տէրը մեծ փրկութիւն
ըրաւ ։
15 Ու երսուն զօրավարներուն իրե-
քը էՈդողոմի քարայրը՝ Դաւիթին
քովը վէմը իջան . և Փղշտացւոց
բանակը ըՌափայնոց հովիտին մէ-
16 ջը բանակեր էր ։ Եւ ան ատենը
Դաւիթ բերդին մէջն էր . ու ան
ատենը Փղշտացիք Բեթլէհեմի մէջ
17 բերդապահ զօրք ունէին ։ Եւ
Դաւիթ փափաքելով ըսաւ . Բեթ-
լէհեմին դուռը եղող ջրհորէն ո՞վ
18 ինծի ջուր կը խմցնէ ։ Ան ատե-
նը աս իրեք մարդը՝ Փղշտացւոց
բանակը ճեղքեցին անցան , ու
Բեթլէհեմին դուռը եղող ջրհորէն
ջուր քաշեցին , և առին Դաւիթին
տարին . բայց Դաւիթ զանիկայ
խմել չուզեց , հապա զանիկայ
19 թափելով՝ Տէրոջը նուիրեց , Ու
ըսաւ . Իմ Աստուածս չցուցրնէ
ինծի՝ որ ես աս բանը ընեմ . միթէ
ես ան մարդիկներուն արիւնը ի-
րենց կեանքո՞վը պիտի խմեմ .
վասն զի իրենց կեանքին վտանգովը
աս ջուրը բերին . ու անկէ խմել
չուզեց ։ Ասոնք են ան իրեք զօ-
րաւոր մարդիկներուն ըրածները ։
20 Եւ Յովաբին եղբայրը իԱբեսսա՝
ան իրեք մարդոյ գլխաւորն էր . ու
անիկայ իր նիզակը իրեք հարիւր
մարդոց վրայ վերցընելով՝ սպաննեց
զանոնք . ու անիկայ իրեքին մէջը
21 անուանի էր . Եւ ծ իրեքին երկու-
քէն աւելի համարում ունենալուն
համար , անոնց գլուխ եղաւ . բայց
առջի իրեքին աստիճանին չհասաւ ։
22 Ու մեծ գործքեր գործող Կաբե-
սէելացի զօրաւոր մարդու մը որ-
դւոյն Յովիադային որդին Բանեան՝
կՄովաբին երկու զօրաւոր մարդիկ-
ները մեռցուց . նաև ձիւնի ժամա-
նակ իջաւ , ու գուբին մէջը առիւ-
23 ծը մեռցուց ։ Ասիկայ Եգիպտացի
մարդը՝ ան հինգ կանգուն բարձր
մարդը մեռցուց . ու Եգիպտացիին
ձեռքը ոստայնանկաց գլանին պէս
նիզակ մը կար . բայց Բանեան ցու-
պով մը անոր վրայ իջաւ , ու Ե-
գիպտացիին ձեռքէն նիզակը
յափշտակեց , և զանիկայ իր նի-
24 զակովը մեռցուց ։ Յովիադայի որ-
դին Բանեան աս բաները ըրաւ , ու
իրեք զօրաւորներուն մէջը անուա-
25 նի եղաւ ։ Անիկայ ահա երսունէն
աւելի պատիւ ունէր , բայց առջի
իրեքին աստիճանին չհասաւ . ու
Դաւիթ զանիկայ իր ատեանին վե-
րակացու դրաւ ։
26 Եւ զօրքերուն զօրաւորները ա-
սոնք էին . Յովաբին եղբայրը հԱ-
սայէլ , Բեթլէհեմացի Դովդայի որ-
27 դին Եղէանան , Արովրացի Սամօթ ,
28 Բելոնացի Քեղղէս , Թեկուացի Եկ-
գեսի որդին Իրաս , Անաթովթացի
29 Աբիեզեր , Ովսացի Սովբաք , Աքու-
30 քացի Եղի , Նետոփաթացի Մա-
արա , Նետոփաթացի Բաանայի
31 որդին Ալադ , Բենիամինի որդւոցը
Գաբաայէն՝ Ռիբայի որդին Եթթի ,
32 Փարաթոնացի Բանեա , Գաասի
ձորերէն Հուրայ , Արաբաթացի
33 Աբիէլ . Բարումացի Ազմօթ , Սա-
34 ղաբինացի Եղիաբա , Գեզոնացի
Հասեմի որդիներէն՝ Արարացի Սա-
35 գէի որդին Յովնաթան . Արարացի
Սաքարի որդին Աքիամ , Ովրի որ-
36 դին Եղիփաղ , Մեքուրաթացի Ո-
37 փեր , Փելոնացի Աքիա , Կարմելա-
ցի Ասարէ , Ազբիայի որդին Նաա-
38 րայ , Նաթանի եղբայրը Յովէլ ,
39 Ագարայի որդին Մաբար , Ամմոնա-
ցի Սելէկ , Շարուհեան Յովաբին
կապարճակիրը Բերովթացի Նաա-
40 րա , Յեթերացի Իրաս , Յեթերա-
41 ցի Գարեբ , Քետացի Ուրիա , Ա-
ղայիի որդին Զաբադ , Ռուբէ-
42 նեանց գլուխը՝ Ռուբէնեան Սիզայի
որդին Ադինա , ու անոր հետը եր-
43 սուն մարդ կար , Մաաքայի որդին
Անան , Մաթանացի Յովսափատ ,
44 Աստարովթացի Ոզիա , Արոերացի
Քովթամի որդիքը՝ Սամա ու Յէի-
45 էլ , Սամարիի որդին Յեդիէլ , ու
անոր եղբայրը Թիսացի Յովքա ,
46 Մահաւացի Եղիէլ , Եղնաամի որ-
դիքը Յարիբայի և Յօսաւիա ,
47 Մովաբացի Յեթեմա , Եղիէլ , Ովբէդ , ու Մեսօբացի Յեսիէլ ։

ԳԼ. ԺԲ

1 Սիկելակի մէջ՝ Դաւիթին քովը ժողվուող մարդիկը ։ 23 Քեբրոնի մէջ՝ անոր քովը եկող զօրքերը ։

1 Եւ աասոնք են որ բՍիկելակ եկան
Դաւիթին քովը , երբոր անի-
կայ դեռ Կիսեան Սաւուղին երեսէն
պահուած էր . ու ասոնք զօրաւոր-
ներէն ըլլալով՝ պատերազմի մէջ օգ-
2 նութիւն կ'ընէին ։ Քանզի աղեղ-

---

1047
ժ Ա Թագ. ԺԷ. 1

է Բ Թագ. ԻԳ. 13
ը Գլ. ԺԴ. 9

ի Բ Թագ. ԻԳ. 18, եւն.

ծ Բ Թագ. ԻԳ. 19, եւն.

կ Բ Թագ. ԻԳ. 20

Ն. Ք. Գ. Ք. 1047

հ Բ Թագ. ԻԳ. 24

Իբր 1058
ա Ա Թագ. ԻԷ. 2
բ Ա Թագ. ԻԷ. 6

Ն. Ք. Գ. իբր 1058

Գ Դատ. Ի. 16

նաւոր էին , ու պարսով քարեր .
ու աղեղով նետերը նետելու՝ թէ
աջ և թէ ձախ ձեռքերնին կը
գործածէին . անոնք Սաւուղին եղ-
բայրներէն Բենիամինեաններէն էին ։
3 Անոնց գլուխը Աքիեզերն էր , ետքը
Յովաս՝ Գաբաացի Սամայային որ-
դիքը , և Յեզիէլ ու Փաղէտ՝ Ա-
զամօթի որդիքը , և Բարաքա , ու
4 Անաթովթացի Յէու , Ու երսու-
նին մէջը զօրաւոր՝ ու երսունին վե-
րակացուն Գաբաւոնացի Իսմա-
յիան , ու Երեմիա , ու Յազիէլ , և
Յօհանան , ու Գադերացի Յովզա-
5 բադ , Եղուզայ , ու Յերիմովթ ,
և Բաաղիա , ու Սամարիա , և Յա-
6 րուփացի Սափատիա , Եղկանա ,
Յեսիա , Ազարիէլ , Յովեզեր , ու
7 Յեսբաամ՝ Կորխացիք , Ու Գե-
դովրացի Յերովամին որդիքը՝ Յո-
վելա ու Զաբադիա ։
8 Եւ Գադեաններէն ալ Դաւիթին

Դ Բ Թագ. Բ. 18

քովը՝ անապատին մէջ բերդը քա-
շուեցան՝ զօրաւոր , քաջ , պատե-
րազմական , վահան ու նիզակ գոր-
ծածող մարդիկներ . անոնց դէմքը
առիւծի դէմքի կը նմանէր , ու լեռ-
ներու վրայի դայծեամներուն պէս
9 ձեթեւաշարժ էին ։ Առաջինը՝ Եզեր ,
երկրորդը՝ Աբդիա , երրորդը՝ Եղի-
10 աբ , Չորրորդը՝ Մասմանա , հին-
11 գերորդը՝ Երեմիա , Վեցերորդը՝
Եթթի , եօթներորդը՝ Եղիէլ ,
12 Ութերորդը՝ Յօհանան , իններոր-
13 դը՝ Եղզաբաթ , Տասներորդը՝ Երե-
միա , մետասաներորդը՝ Մաքբա-
14 նայ էր ։ Ասոնք Գադի որդւոցմէ՝
զօրքին իշխաններն էին . պզտիկնե-
րուն մէկը՝ հարիւրի վրայ , ու մե-
ծերուն մէկը՝ հազարի վրայ էր ։
15 Ասոնք են որ առաջին ամսուն մէջ

Ե Յես. Գ. 15

Յորդանանէն անցան , երբոր ջուրը
իր բոլոր եզերքները կոխեր էր , և
դէպ ՚ի արեւելք ու արեւմուտք՝ բո-
լոր հովիտի բնակիչները փախցու-
ցին ։
16 Ու բերդը Դաւիթին քովը՝ Բե-
նիամինի ու Յուդայի որդւոցմէ ալ
17 եկան ։ Եւ Դաւիթ անոնց առջեւը
ելաւ , ու պատասխան տալով՝ ա-
նոնց ըսելով . Թէ որ խաղաղու-
թեամբ ինծի օգնութիւն ընելու
եկեր էք , իմ սիրտս ձեզի հետ պի-
տի ըլլայ . բայց թէ որ խաբէու-
թեամբ զիս իմ թշնամեացս ձեռքը
մատնելու համար եկեր էք , ( որ իմ
ձեռքերուս մէջ անօրէնութիւն մը
չկայ , ) մեր հայրերուն Աստուածը
18 տեսնէ , ու յանդիմանէ ։ Եւ իշ-

Ղ Բ Թագ. ԺԷ. 25

Ե Դատ. Զ. 34

խաններուն գլուխը՝ Ամեսայի
Հոգւով լեցուեցաւ , ու ըսաւ .
Մենք քուկդ ենք , ով Դաւիթ ,
ու քեզի հետ պիտի ըլլանք . ով
Յեսսէի որդի . խաղաղութիւն՝
խաղաղութիւն քեզի , ու քու
օգնականներուդ խաղաղութիւն
ըլլայ . քանզի քու Աստուածդ
քեզի օգնական է ։

Ն. Ք. Գ. իբր 1058

Ան ատենը Դաւիթ զանոնք ըն-
դունեց , ու զանոնք իր գունդին
իշխաններուն մէջը դրաւ ։
19 Մանասէէն ալ Դաւիթին ան-
ցան , Ըերբոր անիկայ Փղշտացւոց
հետ՝ Սաւուղի վրայ պատերազմե-
լու գնաց . բայց անոնց օգնութիւն
*չըրին . քանզի Փղշտացւոց նա-
խարարները խորհրդով զանիկայ
ետ խրկեցին՝ ըսելով . Աթէնոյ մեր
գլուխներուն վնասովը Թիր տիրոջը
20 Սաւուղին պիտի անցնի ։ Երբոր ա-
նիկայ Սիկելակ կ'երթար , Մանա-
սէէն՝ Մանասէին հազարապետնե-
րը՝ Եդնան , Յովզաբադը , Յեդիէլը ,
Միքայէլը , Յովզաբադը , Եղիուսը
21 ու Սաղթին անոր անցան . Եւ ա-
սոնք Դաւիթին օգնութիւն ըրին
†աւազակներուն Ժգունդին վրայ
յարձակելու" . քանզի ամէնքն ալ
զօրաւոր կտրիճներ էին . ու զօրաց
22 իշխաններ եղան . Ինչու որ ան ա-
տենը օրէ օր Դաւիթին կու գային՝
անոր օգնութիւն ընելու համար ,
մինչև որ Աստուծոյ բանակին պէս
մէկ մեծ բանակ մը եղաւ ։
23 Եւ ասոնք են ան սպառազինեալ
‡զօրքերուն համրանքները՝ որոնք
Իքեբրոն եկան Դաւիթին , որ Լ Տէ-
րոջը խօսքին համեմատ Ի անոր
դարձրնեն Սաւուղին թագաւորու-
24 թիւնը . Յուդայի որդւոցմէ՝ վա-
հան ու նիզակ կրող վեց հազար
ութը հարիւր սպառազինեալ զօրք .
25 Շմաւոնի որդւոցմէ՝ եօթը հազար
հարիւր պատերազմական զօրաւոր
26 կտրիճներ . Ղեւիի որդւոցմէ չորս
27 հազար վեց հարիւր . Եւ Ահարո-
նեաններուն առաջնորդը Յովիա-
դան , ու անոր հետ իրեք հազար
28 եօթը հարիւր մարդիկ . Եւ զօրաւոր
կտրիճ ԾՍադովկ երիտասարդը , ու
անոր հօրը տունէն քսանուերկու
29 իշխան . Եւ Սաւուղին Կեղբայրնե-
րէն՝ Բենիամինի որդւոցմէ իրեք
հազար մարդիկ . քանզի մինչև ան
ատենը՝ Հանոնց շատը Սաւուղին
տանը պահպանութիւնը կ'ընէին .
30 Ու Եփրեմի որդւոցմէ՝ անոնց ազգա-
տոհմներուն անուանի մարդիկները՝
քսան հազար ութը հարիւր զօրա-
31 ւոր կտրիճներ . Եւ Մանասէին կէս
ցեղէն՝ տասնութը հազար մար-
դիկ , որոնք իրենց անուններովը
որոշուեցան երթալու՝ ու Դաւի-
32 թը թագաւոր դնելու . Եւ Իսա-
քարի որդւոցմէ" երկու հարիւր
իմաստուն իշխաններ . Յորոնք ժա-

իբր 1056

Ը Ա Թագ. ԻԹ. 2

* Կամ՝ չըրաւ .

Թ Ա Թագ. ԻԹ. 4

† Կամ՝ անոր գունդին վրայ դրաւեցաւ .

Ժ Ա Թագ. Լ. 1, 9, 10

1048

‡ Կամ՝ զօրաց իշխաններուն . Եբր.՝ զօրաց գլուխներուն

Ի Բ Թագ. Բ. 3, 4 . Ե. 1 . Գլ. ԺԱ. 1

Լ Ա Թագ. ԺԶ. 1, 3

Ի Գլ. Ժ. 14

Ծ Բ Թագ. Ը. 17

Կ Ծն. Լա. 23

Հ Բ Թագ. Բ. 8, 9

Յ Եսթ. Ա. 13

Ն. Ք. Գ.Ք. 1048

մանակներուն համեմատ գիտէին
թէ Իսրայէլը ինչ ընելու է . ու
անոնց բոլոր եղբայրները անոնց բե-
33 րանը կը նայէին . Զաբուղոնէն՝
պատերազմի ելլող եւ ամէն տեսակ
պատերազմական գործիքներով
պատերազմող յիսուն հազար մար-
դիկ , որոնք *մէկ սրտով" կարգաւ
34 կը շարուէին . Ու Նեփթաղիմէն
հազար իշխան , եւ անոնց հետ եր-
սունեօթը հազար վահանաւոր
35 ու նիզակաւոր մարդիկ . Ու Դա-
նեաններէն՝ քսանութը հազար
վեց հարիւր պատերազմական մար-
36 դիկ . Եւ Ասերէն՝ քառսուն հազար
37 պատերազմի գացող զօրք . Ու
Յորդանանու անդիի կողմէն՝ Ռու-
բէնեաններէն ու Գադեաններէն եւ
Մանասէի կէս ցեղէն՝ ամէն տե-
սակ պատերազմական գործիքնե-
րով պատերազմող հարիւր քսան
38 հազար մարդիկ ։ Բոլոր աս գուն-
դով շարուող պատերազմական
մարդիկները անկեղծ սրտով Քեբ-
րոն եկան՝ Դաւիթը բոլոր Իս-
րայէլի վրայ թագաւոր դնելու
համար . ու Իսրայէլին բոլոր մնա-
ցորդն ալ մէկ սրտով էր՝ Դա-
39 ւիթը թագաւոր ընելու ։ Եւ հոն՝
Դաւիթին հետ ուտելով ու խմե-
լով՝ իրեք օր կեցան . քանզի անոնց
եղբայրները անոնց համար պատ-
40 րաստութիւն տեսեր էին ։ Եւ ա-
նոնց մօտ եղողներն ալ՝ մինչեւ ան-
գամ Իսաքարը , Զաբուղոնը ու
Նեփթաղիմը՝ էշերով , ուղտերով ,
ջորիներով ու եզներով հաց բերին .
Նաեւ ուտելիքի համար շատ ալիւր ,
չոր թուզ , չամիչ , գինի , եղ ,
արջառներ ու ոչխարներ . քանզի
Իսրայէլի մէջ ուրախութիւն կար ։

* Եբր. ո՛չ սրտով ու սրտով. Սաղ. ԺԲ. 2.

## ԳԼ. ԺԳ

1 Դաւիթ մեծ հանդէսով տապանակը Կարիաթարիմէն բերելու կ'երթայ ։ 9 Ոզային զարնուելուն համար՝ տապանակը Աբդեդոմին տունը կը ձգուի ։

1045

1 Եւ Դաւիթ հազարապետներուն
ու հարիւրապետներուն եւ բոլոր
իշխաններուն հետ խորհուրդ ըրաւ ։
2 Ու Դաւիթ բոլոր Իսրայէլի ժողով-
քին ըսաւ . Թէ որ ձեզի հաճոյ
կ'երեւնայ , ու աս բանը մեր Տէր
Աստուծմէն է , Իսրայէլի բոլոր եր-
կիրներուն մէջը ա մնացած մեր եղ-
բայրներուն , ու անոնց հետ քա-
հանաներուն ու Ղեւտացիներուն ի-
րենց քաղաքները ու արուարձան-
ները † մարդ խրկենք", որ մեր քո-
3 վը ժողվուին . Եւ մեր Աստուծոյն
տապանակը մեր քովը փոխադրենք .
բ քանզի Սաւուղին օրերը զանիկայ
4 չխնդրեցինք ։ Ու բոլոր ժողով-

ա Թագ. Լ. 1. Եսա. ԼԷ. 4.

† Եբր. տարածենք ու խրկենք.

բ Ա Թագ. Է. 1, 2

Ն. Ք. Գ.Ք. 1045

քը այսպէս ընելու հաճութիւն
տուաւ . քանզի աս խօսքը բոլոր
ժողովուրդին աչքերուն ուղիղ
5 երեւցաւ ։ Եւ գ Դաւիթ՝ դ Եգիպ-
տոսի Սիովրէն մինչեւ Եմաթի մուտ-
քը բոլոր Իսրայէլը ժողվեց՝ Աս-
տուծոյ տապանակը ե Կարիաթա-
6 րիմէն բերելու համար ։ Ու Դա-
ւիթ բոլոր Իսրայէլին հետ՝ զ Բա-
աղը այսինքն Յուդայի Կարիաթա-
րիմը ելաւ , որ անկէ՝ է քերովբէից
մէջ նստող Եհովայ կոչուած Աս-
տուծոյն տապանակը վեր հանէ ։
7 Եւ Աստուծոյ տապանակը ըԱբի-
նադաբին տունէն վերցնելով թ մէկ
նոր սայլի մը վրայ դրին . ու Ոզա
ու Աքիով ան սայլը կը վարէին ։
8 ժ Եւ Դաւիթ ու բոլոր Իսրայէլը
բոլոր ուժով Աստուծոյ առջեւը
կը խաղային օրհնութիւններով ,
քնարներով , տաւիղներով , թըմ-
բուկներով , ծնծղաներով ու փո-
ղերով ։
9 Ու մինչեւ ի Քիդոնին կալը եկան .
եւ Ոզա իր ձեռքը երկընցուց որ տա-
պանակը բռնէ . քանզի եզները ղո-
10 նէյ ծռեր էին ։ Ու Տէրոջը բար-
կութիւնը Ոզային դէմ բորբոքե-
ցաւ . Լ եւ ձեռքը տապանակին եր-
կընցընելուն համար՝ զանիկայ զար-
կաւ . ու անիկայ հոն՝ խ Աստու-
11 ծոյ առջեւը մեռաւ ։ Եւ Դաւիթ
տրտմեցաւ . քանզի Տէրը հարուա-
ծով Ոզան զարկաւ . ու ան տեղին
անունը՝ մինչեւ աս օրս ‡ Փարէս Ոզա
12 ըսուեցաւ ։ Եւ Դաւիթ ան օրը
Աստուծմէ վախցաւ , ու ըսաւ .
Աստուծոյ տապանակը ի՞նչպէս
13 քովս բերեմ ։ Ու Դաւիթ՝ տա-
պանակը իր քովը՝ Դաւիթին քա-
ղաքը չբերաւ . հապա զանիկայ Գե-
թացի Աբդեդոմին տունը խոտոր-
14 ցուց ։ ծ Եւ Աստուծոյ տապանակը՝
Աբդեդոմին քովը՝ անոր տանը մէջ
իրեք ամիս մնաց . ու Տէրը կ Աբդե-
դոմին տունը ու անոր բոլոր ստա-
ցուածքը օրհնեց ։

գ Ա Թագ. Է. 1. Բ Թագ. Զ. 1.
դ Յես. ԺԳ. 3.
ե Ա Թագ. Զ. 21. Է. 1.
զ Յես. ԺԵ. 9, 60.
է Ա Թագ. Դ. 4. Բ Թագ. Զ. 2.
ը Ա Թագ. Է. 1.
թ Տես Թուոց. Դ. 15. Գլ. ԺԵ. 2. 13.
ժ Բ Թագ. Զ. 5.
ի Բ Թագ. Զ. 6 Նաքոնի.
լ Թուոց. Դ. 15. Գլ. ԺԵ. 13, 15.
խ Ղեւ. Ժ. 2.
‡ Այսինքն՝ Ոզայի խրամատութիւնը.
ծ Բ Թագ. Զ. 11.
կ Ծն. Լ. 27. Գլ. ԻԶ. 5.

## ԳԼ. ԺԴ

1 Քիրամին՝ Դաւիթին ցուցուցած մարդասիրութիւնը ։ 2 Դաւիթին երջանկութիւնը ։ անոր կնիկները ու որդիները ։ 8 Դաւիթ երկու անգամ Փղշտացիները կը յաղթէ ։

իբր 1043

1 Եւ Տիւրոսի ա Քիրամ թագաւո-
րը Դաւիթին դեսպաններ խրկեց ,
ու եղեւնափայտեր , որմնադիրներ ,
ու հիւսներ , որ անոր տուն շինեն ։
2 Ան ատենը Դաւիթ իմացաւ որ Տէ-
րը զինքը Իսրայէլի վրայ թագաւոր
հաստատեց . վասն զի իր ժողո-
վուրդին Իսրայէլին համար՝ անոր
թագաւորութիւնը բարձրացաւ ։
3 Եւ Դաւիթ Երուսաղէմի մէջ ու-

ա Բ Թագ. Ե. 11, ...

Ն. Ք. ԳՔ. Իբր 1043
րիշ կնիկներ ալ առաւ. ու Դա-
ւիթ ուրիշ տղաքներ ու աղջիկներ
բ Գլ. գ. 5 — 4 ալ ծնաւ ։ Ու բ Երուսաղէմի մէջ
անոր ծնած տղոցը անունները ա-
սոնք են. Սամմաա, Սովբաբ, Նա-
5 թան, Սողոմոն, Ցեբաար, Եղի-
6 սուա, Եղիփաղէտ, Նոգա, Նափեկ,
գ Բթագ. ե. 16 Եղիադա ։ — 7 Ցափիէ, Եղիսամա, գ Բաղիադա
ու Եղիփաղէտ ։
8 Եւ Փղշտացիք երբոր լսեցին
դ Բթագ. ե. 17 — դ Դաւիթին բոլոր Իսրայէլի վրայ
թագաւոր օծուիլը, բոլոր Փղշտա-
ցիք ոտք ելան որ Դաւիթը փըն-
տըռեն. երբոր Դաւիթ այս բանը
1047 — 9 լսեց, անոնց դիմացը ելաւ ։ Ու
Ե Գլ. ԺԱ. 15 — Փղշտացիք եկան՝ և ե Ռափայնոց
10 հովիտին մէջը տարածուեցան ։ Ու
Դաւիթ Աստուծոյ հարցուց ու ը-
սաւ. Փղշտացւոց դէմը ելլե՞մ. ու
զանոնք իմ ձեռքս պիտի մատնե՞ս ։
Եւ Տէրը անոր ըսաւ. Ելի՛ր, ու
զանոնք քու ձեռքդ պիտի մատ-
11 նեմ ։ Եւ անոնք Բաաղփարասինը
ելան. ու Դաւիթ զանոնք հոն
զարկաւ. ու Դաւիթ ըսաւ. Աս-
տուած իմ թշնամիներս իմ ձեռ-
քովս պատառեց, ինչպէս որ ջու-
րերը բոլորովին կը պատառեն. անոր
համար ան տեղւոյն անունը Բաաղ-
12 փարասին կոչեցին ։ Եւ Փղշտացիք
հոն թողուցին իրենց աստուածնե-
րը. ու Դաւիթ հրամայեց, ու
զանոնք կրակով այրեցին ։
զ Բթագ. ե. 22 — 13 զ Եւ Փղշտացիք նորէն մէյմըն ալ
14 հովիտին մէջը տարածուեցան ։ Ու
Դաւիթ նորէն Աստուծոյ հարցուց.
և Աստուած անոր ըսաւ. Անոնց
ետևէն չելլես. հապա անոնց բոլոր-
է Բթագ. ե. 23 — տիքը պտըտելով՝ է թթենիներուն
15 կողմէն անոնց վրայ երթաս. Ու
երբոր թթենիներուն գլուխը քա-
լուածքի մը ձայն լսես, ան ատենը
պատերազմելու ելլես. քանզի Աս-
տուած քու առջևէդ պիտի ելլէ
Փղշտացւոց բանակը զարնելու հա-
16 մար ։ Եւ Դաւիթ այնպէս ըրաւ,
ը Տե. Բթագ. ե. 25 — ինչպէս որ Աստուած իրեն հրամա-
յեց. ու ը Գաբաւոնէն մինչև Գա-
զեր Փղշտացւոց բանակը զարկին ։
Ի Յես. զ. 27 ; Բ Մն. ԻԶ. 8 — 17 Եւ ի Դաւիթին անունը ամէն եր-
կիրներու մէջ տարածուեցաւ. և
ժ Բ Օր. Բ. 25 ; ԺԱ. 25 — Տէրը ժ ամէն ազգերուն վրայ անոր
վախը ձգեց ։

ԳԼ. ԺԵ

1 Դաւիթ տապանակին համար տեղ մը պատ-
րաստելով՝ քահանաներուն ու Ղևտացիներուն
կը հրամայէ որ զանիկայ Աբդեդոմին տունէն
բերեն. 25 ու զանիկայ բերելուն հանդէսը մեծ
ուրախութեամբ կը կատարէ ։ 29 Մեղքող
կ'անարգէ Դաւիթը ։

1042 — 1 Ու անիկայ իրեն համար Դաւիթի
քաղաքին մէջ տուներ շինեց,
ու Աստուծոյ տապանակին համար
տեղ մը պատրաստեց, ա և անոր — Ն. Ք. ԳՔ. 1042
2 համար վրան մը կանգնեց ։ Ան ա- — ա Գլ. ԺԴ. 1
տենը Դաւիթ ըսաւ. բ Աստուծոյ — բ Թու. Դ.
տապանակը վերցնելը ուրիշ մէկու — 2, 15 ; Բ Օր.
մը օրինաւոր չէ, բայց միայն Ղևտա- — Ժ. 8 ; ԼԱ.
ցիներուն. քանզի Տէրը զանոնք — 9
ընտրեց, որ Աստուծոյ տապանակը
վերցնեն, ու յաւիտեան անոր ծա-
ռայութիւն ընեն ։
3 Եւ Դաւիթ գ բոլոր Իսրայէլը Ե- — Իբր 1042
րուսաղէմի մէջ ժողվեց, որ Տէրոջը — գ Գթագ. Ը.
տապանակը՝ անոր համար պատ- — 1 ; Գլ. ԺԳ.
4 րաստուած տեղը հանէ ։ Ու Դա- — 5
ւիթ՝ Ահարոնի որդիները ու Ղև-
5 տացիները ժողվեց. Կահաթի որ-
դւոցմէ՝ Ուրիէլ իշխանը, ու անոր
եղբայրները հարիւր քսան հոգի.
6 Մերարիի որդւոցմէ՝ Ասայիա իշ-
խանը, ու անոր եղբայրները երկու
7 հարիւր քսան հոգի. Գերսոնի որ-
դւոցմէ՝ Յովէլ իշխանը, ու անոր
եղբայրները հարիւր երսուն հոգի.
8 դ Եղիսափանի որդւոցմէ՝ Սեմայիա — դ Ել. Զ. 22
իշխանը, ու անոր եղբայրները եր-
9 կու հարիւր հոգի. ե Քեբրոնի որ- — ե Ել. Զ. 18
դւոցմէ՝ Եղիէլ իշխանը, ու անոր
10 եղբայրները ութսուն հոգի. Ոզիէլի
որդւոցմէ՝ Ամինադաբ իշխանը, ու
անոր եղբայրները հարիւր տասն-
երկու հոգի ։
11 Եւ Դաւիթ՝ Սադովկ ու Աբիա-
թար քահանաները, ու Ղևտացի-
ներէն՝ Ուրիէլը, Ասայիան, Յովէ-
լը, Սեմայիան, Եղիէլը ու Ամինա-
12 դաբը կանչեց, Եւ անոնց ըսաւ.
Դուք Ղևտացւոց տոհմերուն իշ-
խաններն էք. ուստի դուք ու
ձեր եղբայրները սրբուեցէ՛ք, որ
Իսրայէլի Տէր Աստուծոյն տապա-
նակը հանէք ան տեղը՝ որ ես ա-
նոր համար պատրաստեր եմ ։
13 զ Վասն զի դուք առջի անգա- — զ Բթագ. Զ.
մին հոն չգտնուելնուդ համար, — 3 ; Գլ. ԺԳ.
է մեր Տէր Աստուածը մեր մէջը հա- — 7
րուած ըրաւ. քանզի զանիկայ կա- — է Գլ. ԺԳ.
նոնաւոր կերպով չխնդրեցինք ։ — 10, 11
14 Եւ Իսրայէլի Տէր Աստուծոյն տա-
պանակը հանելու համար՝ քահա-
նաները ու Ղևտացիները սրբուե-
15 ցան ։ Ու Ղևտացւոց որդիքը՝
Աստուծոյ տապանակը ձողերովը
իրենց ուսերուն վրայ վերցուցին,
ինչպէս որ ը Մովսէս Տէրոջը խօս- — ը Ել. ԻԵ. 14 ;
քովը պատուիրեր էր ։ — Թու. Դ. 15 ;
Է. 9
16 Եւ Դաւիթ Ղևտացւոց իշխան-
ներուն պատուիրեց որ իրենց եղ-
բայրներէն՝ նուագարաններով,
տաւիղներով, քնարներով, ու
ծնծղաներով երգեցողները կայնե-
ցընեն, որ ուրախութեան ձայներ
17 վերցնելով հնչեցնեն ։ Ուստի
Ղևտացիները՝ թ Յովէլի որդին Ե- — թ Գլ. Զ. 33
մանը, և անոր եղբայրներէն՝

Ն. Ք. ԴՌ. Թիւ 1042

ժ Գլ. Զ. 39։
է Գլ. Զ. 44։

ծ Բարաքիայի որդին Ասափը, ու
անոնց եղբայրներէն՝ Մերարիի որ-
դուցմէ էԿիսեային որդին Եթանը
18 կայնեցուցին. Եւ անոնց հետ երկ-
րորդ կարգէն՝ անոնց եղբայրները
դռնապանները՝ Զաքարիան, Բենը,
Յազիէլը, Սեմիրամովթը, Յեքիէլը,
Ունին, Եղիաբը, Բանեան, Մաա-
սիան, Մատաթիան, Եղիփաղէն,
Մակենիան, Աբդեդոմը ու Յէիէլը։
19 Արդ՝ Եման, Ասափ ու Եթան եր-
գեցողները՝ պղնձէ ծնծղաներ կը
20 զարնէին։ Եւ Զաքարիա, ւԱզիէլ,
Սեմիրամովթ, Յեքիէլ, Ունի, Ե-
ղիաբ, Մաասիա ու Բանեա՝ տա-
ւիղներով իԱղամոթի եղանակին վը-
21 րայ էին։ Եւ Մատաթիա, Եղի-
փաղէ, Մակենիա, Աբդեդոմ, Յէ-
իէլ ու Ազազիա՝ քնարներով
ծՇէմինիթի եղանակով կ՚առաջնոր-
22 դէին։ Եւ Քենոնիա՝ Ղեւտացի-
ներուն երգեցողութեան առաջ-
նորդը ըլլալով, զանոնք երգելու կը
վարժէր, որովհետեւ հանճարեղ
23 էր։ Ու Բարաքիա ու Եղկանա՝
տապանակին դռնապաններն էին։
24 Եւ Սաբանիա, ու Յովսափատ, և
Նաթանայէլ, ու Ամեսայի, և Զա-
քարիայ, ու Բանեա, ու Եղիազար
քահանաները՝ Աստուծոյ տապա-
նակին առջեւը կփողեր կը հնչեցնէ-
ին. և Աբդեդոմ ու Յէիա՝ տա-
պանակին դռնապաններն էին։
25 Այսպէս հԴաւիթ, և Իսրայէլի
ծերերը ու հազարապետները՝ Տէ-
րոջը ուխտին տապանակը Աբդե-
դոմին տունէն ուրախութեամբ
26 հանելու գացին։ Ու երբոր Աս-
տուած՝ Տէրոջը ուխտին տապա-
նակը վերցնող Ղեւտացիներուն
օգնութիւն ըրաւ, եօթը զուարակ
27 ու եօթը խոյ զոհ ըրին։ Եւ Դա-
ւիթ բեհեզէ պատմուճան հագեր
էր. նոյնպէս ալ տապանակը վեր-
ցնող բոլոր Ղեւտացիները, ու եր-
գեցողները, ու երգեցողներուն եր-
գոց իշխանը Քենոնիան. և Դաւի-
թին վրայ քթանէ եփուտ կար։
28 յՈւ բոլոր Իսրայէլը Տէրոջը ուխ-
տին տապանակը ուրախութեան
աղաղակով, փողի ձայնով, սրինգ-
ներով, ու ծնծղաներով, տաւիղ-
ներ ու քնարներ զարնելով՝ վեր կը
29 հանէին։ Ու երբոր ղՏէրոջը ուխ-
տին տապանակը մինչեւ Դաւիթին
քաղաքը եկաւ, Սաւուղին աղջիկը
Մեղքող պատուհանէն նայեցաւ,
ու Դաւիթ թագաւորին կաքաւելը
ու խաղալը տեսնելով՝ զանիկայ իր
սրտին մէջը անարգեց։

ւ Հմր 18 Ագ-
ուդի Յա-
զիէլ։

ի Սաղ. Խզ.
ին վերնա-
գիրը։

ծ Սաղ. Զ. ին
վերնագի-
րը։

կ Թուոց Ժ. 8։
Սաղ. Ձա.
8։

հ Բ Թագ. Զ.
12, 13, &c,
Գ Թագ. Ը.
1։

յ Գլ. ԺԳ. 8։

ղ Բ Թագ. Զ.
16։

## ԳԼ. ԺԶ

1 Դաւիթ ուրախութեան զոհ կը մատուցանէ. 4 երգեցողներուն կը հրամայէ որ շնորհակա-
լութեան երգ երգեն։ 7 Շնորհակալութեան սաղմոսը։ 37 Դաւիթ պաշտօնեաներ, դռնապաններ, քահանաներ ու երգեցողներ կ՚որոշէ, որ շարունակ տապանակին քովը ծառայութիւն ընեն։

1 Եւ աԱստուծոյ տապանակը տա-
րին, ու զանիկայ ան վրանին
մէջը դրին, որն որ Դաւիթ անոր
համար կանգներ էր. և Աստուծոյ
առջեւը ողջակէզներ ու խաղաղու-
2 թեան զոհեր մատուցին։ Եւ Դա-
ւիթ երբոր ողջակէզները ու խա-
ղաղութեան զոհերը մատուցանելը
լմնցուց, Տէրոջը անունով ժո-
3 ղովուրդը օրհնեց։ Ու Իսրայէլի
բոլոր մարդիկներուն՝ էրիկ մարդէն
մինչեւ կնիկ մարդը՝ ամէն մէկուն
մէկ նկանակ հաց, կտոր մը միս ու
կարկանդակ մը բաշխեց։
4 Եւ Տէրոջը տապանակին առ-
ջեւը՝ Ղեւտացիներէն պաշտօնեա-
ներ դրաւ, Իսրայէլի Տէր Աստուա-
ծը բյիշելու՝ օրհնելու ու փառա-
5 ւորելու համար. Գլխաւորը Ա-
սափն էր, ու անոր երկրորդը
Զաքարիան, Նաեւ Յէիէլը, Սե-
միրամովթը, Յեքիէլը, Մատա-
թիան, Եղիաբը, Բանեան, Աբ-
դեդոմը, ու Յէիէլը՝ տաւիղնե-
րու ու քնարներու նուագարաններ
կը զարնէին. բայց Ասափ ծնծղաներ
6 կը զարնէր։ Եւ Բանեա ու Յա-
զիէլ քահանաները՝ Աստուծոյ ուխ-
տի տապանակին առջեւը միշտ փո-
ղեր կը հնչեցնէին։
7 Եւ ան նոյն օրը Դաւիթ՝ գառջի
անգամ այս յետագայ սաղմոսը տուաւ
Ասափին ու անոր եղբայրներուն
ձեռքը, որ Տէրոջը գոհութիւն
տան։
8 դԳոհացէ՛ք Տէրոջմէ. անոր անու-
նը կանչեցէք. անոր գործքերը ժո-
ղովուրդներուն մէջը պատմեցէ՛ք։
9 Երգեցէ՛ք անոր. սաղմոս ըսէք
անոր. պատմեցէ՛ք անոր բոլոր
հրաշքները։
10 Անոր սուրբ անունովը պարծեն-
ցէք. Տէրը խնդրողներուն սիրտը
թող ուրախ ըլլայ։
11 Տէրը ու անոր զօրութիւնը
խնդրեցէ՛ք. ամէն ժամանակ անոր
երեսը փնտռեցէ՛ք։
12 Յիշեցէ՛ք անոր ըրած հրաշքները,
անոր նշանները, ու բերնին դա-
տաստանները։
13 Ո՛վ անոր ծառային Իսրայէլին
սերունդը, ով Յակոբին որդիքը՝
անոր ընտրեալները.
14 Եհովան ինքն է մեր Աստուածը.
անոր դատաստանները բոլոր երկրիս
մէջն են։
15 Անոր ուխտը յաւիտեան յիշե-
ցէ՛ք. անոր պատուիրած խօսքը
մինչեւ հազար ազգ.

Ն. Ք. ԴՌ. Թիւ 1042

ա Բ Թագ. Զ.
17-19։

բ Սաղ. ՀԸ.
ին, և Հ. ին
վերնագիր-
ները։

գ Տես Բ
Թագ. ԻԳ.
1։

դ Սաղ. ՃԵ.
1—15։

Ն. ք. Ք. ի՞ր 1042

ե Ծն. ժէ. 2։ իզ. 3։ իը. 13։ լե. 11։

16 Ան ուխտը՝ որ Աբրահամին հետ
ըրաւ, ու իր երդումը՝ որ Իսահա-
կին ըրաւ.
17 Յակոբին ալ հաստատեց զանի-
կայ՝ օրէնք մը ըլլալու, ու Իսրա-
յէլին ալ յաւիտենական ուխտ
մը,
18 Ըսելով. Քեզի պիտի տամ Քա-
նանու երկիրը՝ ձեր ժառանգու-
թեան վիճակը.
19 Երբոր դուք սակաւաթիւ էիք,
զ և քիչուոր ու պանդուխտ՝ անոր
մէջը։
20 Եւ անոնք մէկ ազգէ ուրիշ ազգի
գացին, ու մէկ թագաւորութենէ
ուրիշ ժողովուրդի.
21 Անիկայ մէկու մը թող չտուաւ
որ զանոնք նեղէ. ե թագաւորներ
ալ յանդիմանեց անոնց համար,
22 Ըսելով. Իմ օծեալներուս մի՛
դպչիք, ու իմ մարգարէներուս
չարութիւն մի՛ ընէք։
23 Երգեցէ՛ք Տէրոջը՝ ո՛վ բոլոր եր-
կիր, օրէ օր անոր փրկութիւնը
քարոզեցէ՛ք։
24 Անոր փառքը ազգերու մէջ պատ-
մեցէ՛ք., ու անոր հրաշքները՝ ամէն
ժողովուրդներու մէջ.
25 Քանզի Տէրը մեծ է, ու խիստ
գովելի. անիկայ ամէն աստուած-
ներուն վրայ ահաւոր է։
26 Ինչու որ ժ ազգերուն ամէն աս-
տուածները *կուռքեր են. բայց
Եհովան երկինքը ստեղծեց։
27 Փառք ու վայելչութիւն կայ
անոր առջին, զօրութիւն ու ու-
րախութիւն անոր բնակութեանը
մէջ.
28 Տէրո՛ջը տուէք՝ ո՛վ ժողովրդոց
տոհմերը, Տէրո՛ջը տուէք փառք ու
զօրութիւն։
29 Տէրո՛ջը տուէք իր անուանը
փառքը. ընծա՛յ առէք, ու անոր
առջե՛ւը եկէք. սուրբ հանդէսով
Տէրոջը երկրպագութիւն ըրէք։
30 Ո՛վ բոլոր երկիր՝ անոր երեսէն
վախցէ՛ք. աշխարհքս ալ պիտի
հաստատուի, ու պիտի չսասանի։
31 Երկինքը թող ուրախանա՛յ, ու
երկիրը ցնծայ, և ազգերուն մէջ
ըսեն թէ՝ Տէրը կը թագաւորէ։
32 Ծովը իր լիութեամբը թող գո-
ռա՛յ, դաշտը ու բոլոր անոր մէջի
եղողները թող ուրախանա՛ն։
33 Ան ատենը անտառին ծառերը
Տէրոջը առջեւը ցնծան, քանզի
երկրին դատաստան ընելու կու
գայ։
34 ի Գոհացէ՛ք Տէրոջմէն, ինչու որ
բարի է. ինչու որ անոր ողորմու-
թիւնը յաւիտեան է։
35 Նաև ըսէ՛ք. Ո՛վ մեր փրկու-
թեան Աստուածը՝ մեզ փրկէ՛, ու
մեզ ժողվէ՛, և մեզ ազգերէն ա-
զատէ, որ քու սուրբ անուանդ
գոհութիւն մատուցանենք, ու
քու օրհնութիւնովդ պարծենանք։
36 ի Օրհնեալ ըլլայ Իսրայէլին Տէր
Աստուածը յաւիտեանս յաւիտե-
նից։
Ու բոլոր ծ ժողովուրդը Ամէն ը-
սելով՝ Տէրը օրհնեցին։
37 Եւ հոն Տէրոջը ուխտի տապա-
նակին առջեւը՝ Ասափը ու անոր եղ-
բայրները թողուց, որ շարունակ
ամէն օրուան պաշտօնը կատարեն
38 տապանակին առջեւը։ Եւ Աբդե-
դոմը ու անոր վաթսունութը
եղբայրները, և Իդիթունի որդին
Աբդեդոմը և Ոսան՝ դռնապաններ
39 էին։ Եւ Սադովկ քահանան ու
անոր քահանայ եղբայրները՝ կ Գա-
բաւոնի բարձր տեղւոյն վրայ հ Տէ-
40 րոջը խորանին առջեւը թողուց, Որ
միշտ յ առտու ու իրիկուն ողջակէզի
սեղանին վրայ՝ Տէրոջը ողջակէզներ
մատուցանեն, ու Տէրոջը Իսրայէ-
լին պատուիրած օրէնքին մէջի ա-
41 մէն գրուածը՝ ի գործ դնեն։ Եւ ա-
նոնց հետ էին Եմանը, ու Իդի-
թունը, ու ուրիշ ընտրուածները՝
որոնք անունով յիշուեցան, որ
Տէրոջը գոհութիւն մատուցանեն,
ղ քանզի անոր ողորմութիւնը յաւի-
42 տեան է. Եւ անոնց՝ այսինքն Եմա-
նին ու Իդիթունին հետ էին նուա-
գածուներուն փողեր ու ծնծղաներ
հնչեցնելու, նաև Աստուծոյ երգերուն
նուագարանները. ու Իդիթունի
որդիքը դրանը պահապաններն էին-
43 էին։ մ Եւ բոլոր ժողովուրդը գնաց՝
ամէն մէկը իր տունը. Դաւիթն ալ
իր տունը օրհնելու դարձաւ։

ղ Ծն. լդ. 30։

ե Ծն. ժբ. 17։ ի. 3։ Ել. է. 15–18։

է Սաղ. ծե. 15։

ը Սաղ. ղզ. 1, ա։

ժ Ղև. ժթ. 4։ * Կամ՝ ունայնութիւններ

ի Սաղ. ճզ. 1։ ճէ. 1։ ճժը. 1։ ճլզ. 1։

լ Սաղ. ճզ. 47, 48։

Ն. ք. Ք. ի՞ր 1042

ի Գ Թագ. ը. 15։

ծ Բ Օր. իէ. 15։

կ Գ Թագ. գ. 4։

հ Գւ. իա. 29։ բ Մն. ա. 3։

յ Ել. իթ. 38, ա։ Թուոց իը. 3, ա։

ղ Հմր 34։ բ Մն. ե. 13։ է. 3։ Եզր. գ. 11։ Երեմ. լգ. 11։

մ Բ Թագ. զ. 19, 20։

## ԳԼ. ԺԷ

1 Նաթան նախ կը հաճի Դաւիթին առաջարկութեանը՝ որ Աստուծոյ տուն մը շինել կ'ուզէր, 3 բայց ետքը Աստուծոյ խօսքովը կ'արգիլէ զանիկայ։ 11 Նաթան օրհնութիւններ ու բարիքներ կը խոստանայ Դաւիթին սերունդին։ 16 Դաւիթին աղօթքը ու շնորհակալութիւնը։

1 Ու ա երբոր Դաւիթ իր տանը մէջ
բնակեցաւ, Դաւիթ՝ Նաթան
մարգարէին ըսաւ. Ահա՛ ես եղևնա-
փայտէ շինուած տան մէջ կը բնա-
կիմ, բայց Տէրոջը ուխտին տապա-
2 նակը վրանի տակ է։ Եւ Նաթան՝
Դաւիթին ըսաւ. Բոլոր սրտիդ
մէջը եղածը ըրէ՛. քանզի Աստուած
3 քու հետդ է։ Ու նոյն գիշերը Աս-
տուծոյ խօսքը Նաթանին եղաւ՝
4 ըսելով. Գնա՛, իմ ծառայիս Դա-
ւիթին ըսէ՛. Տէրը այսպէս կ'ըսէ.
Իմ բնակելու տունս դուն պէտք
5 չշինես. Քանզի Իսրայէլը Եգիպտոս-
էն հանած օրէս մինչև աս օրս՝ տան

ա Բ Թագ. է. 1, ա։

Ն. Ք. Դ. Ք. իրր 1042

մէջ չբնակեցայ, հապա վրանէ վրան
6 ու խորանէ խորան պտըտեցայ ։ Բո-
լոր Իսրայէլին հետ որչափ տեղ որ
պտըտեցայ, միթէ բան մը խօսե-
ցա՞յ Իսրայէլի դատաւորներուն մէ-
կուն հետ՝ որոնց իմ ժողովուրդս
հովուելու հրաման տուեր էի, ու
ըսի՞ թէ՝ Ինչո՞ւ համար ինծի եղե-
7 նափայտէ տուն մը չշինեցիք ։ Եւ
հիմա իմ ծառայիս Դաւիթին ա-
սանկ ըսես. Զօրաց Տէրը այսպէս
կ'ըսէ. Ես քեզ փարախէն՝ ոչխար-
ներուն ետևէն առի, որ իմ Իսրա-
յէլ ժողովուրդիս առաջնորդ ըլ-
8 լաս. Եւ ուր որ կ'երթայիր, քու
հետդ էի, և քու առջևէդ բոլոր
թշնամիներդ կոտրեցի. ու քու ա-
նունդ երկրիս վրայ եղող մեծերուն
9 անուանը պէս ըրի ։ Եւ իմ ժո-
ղովուրդիս Իսրայէլին ալ մէկ տեղ
մը պիտի որոշեմ, ու զանիկայ պի-
տի տնկեմ. ու իր տեղը պիտի բնա-
կի, ալ պիտի չշարժի. և անիրա-
ւութեան որդիքը առջինին պէս՝
մէյմըն ալ պիտի չնեղեն զանիկայ,
10 Ինչպէս որ իմ ժողովուրդիս Իսրա-
յէլին վրայ դատաւորներ դրած օրէս
ի վեր եղաւ. ու քու ամէն թշնա-
միներդ պիտի նուաճեմ. ու քեզի
կ'իմացընեմ որ Տէրը քեզի տուն
11 պիտի շինէ ։ Ու երբոր քու օրերդ
լեցուին, և քու հայրերուդ խառ-
նուիս, քեզմէ ետքը՝ քու սերունդդ՝
քու որդիներէդ մէկը պիտի բարձ-
րացընեմ, ու անոր թագաւորու-
12 թիւնը պիտի հաստատեմ ։ Անի-
կայ ինծի տուն պիտի շինէ. ու ա-
նոր աթոռը յաւիտեան պիտի
13 կանգնեմ. ᵇԵս անոր հայր պիտի
ըլլամ, ու անիկայ ինծի որդի պիտի
ըլլայ. ու իմ ողորմութիւնս անկէ
պիտի չվերցընեմ, ինչպէս որ քեզմէ
14 առաջ եղողէն վերցուցի ։ Եւ ᶜզա-
նիկայ յաւիտեան իմ տանս մէջ՝ ու
իմ թագաւորութեանս մէջ պիտի
հաստատեմ. ու անոր աթոռը յա-
15 ւիտեան հաստատ պիտի ըլլայ ։ Եւ
Նաթան աս բոլոր խօսքերը ու աս
բոլոր տեսիլքը մի ըստ միոջէ Դա-
ւիթին զրուցեց ։
16 ᵈԵւ Դաւիթ թագաւորը գնաց,
Տէրոջը առջևը նստաւ, ու ըսաւ.
Ո՛վ Տէր Աստուած՝ ես ո՞վ եմ, ու
իմ տունս ի՞նչ է, որ զիս մինչև
17 հոս բերիր. Սակայն ասիկայ քու
աչքերուդ պզտիկ երևցաւ՝ ո՛վ Աս-
տուած, ու քու ծառայիդ տանը
վրայով հեռաւոր ժամանակի հա-
մար խօսեցար, ու ինծի՛ ո՛վ Տէր Աս-
տուած՝ բարձր աստիճանի մարդու
18 պէս նայեցար ։ Եւ քու ծառայիդ
փառքին համար՝ Դաւիթ ալ աւելի
ի՞նչ խօսի. դուն քու ծառադ կը
19 ճանչնաս ։ Ո՛վ Տէր՝ քու ծառա-
յիդ սիրոյն համար, ու քու սրտիդ
ուղածին պէս՝ աս բոլոր մեծ բաները
ըրիր, որ աս բոլոր մեծ բաները
20 գիտցընես ։ Ո՛վ Տէր՝ քեզի պէս
ուրիշ մէկը չկայ, ու քեզմէ զատ
Աստուած չկայ, մեր ականջներովը
21 բոլոր լսածներնուս համեմատ ։ Եւ
երկրիս վրայ ո՞ր ազգը քու ժողո-
վուրդիդ Իսրայէլին պէս է, որուն
համար նոյն ինքն Աստուած եկաւ
զանիկայ փրկելու, իրեն ժողովուրդ
ընելու. որ Եգիպտոսէն ազատած
ժողովուրդիդ առջևէն ազգեր վռըն-
տելով՝ քեզի մեծ ու երևելի անուն
22 ստացար ։ Եւ քու ժողովուրդդ
Իսրայէլը յաւիտեան քեզի ժողո-
վուրդ ըրիր, ու դուն ո՛վ Տէր՝ ա-
23 նոնց Աստուած եղար ։ Եւ հիմա
ո՛վ Տէր՝ քու ծառայիդ ու անոր
տանը համար ըսած խօսքդ թող
յաւիտեան հաստատուի. ու ըսա-
24 ծիդ պէս ըրէ. Թող հաստատուի,
ու քու անունդ յաւիտեան մեծ
ճանչցուի, ու ըսեն թէ՝ Զօրու-
թեանց Տէրը Իսրայէլին Աստուածն
է, Աստուած Իսրայէլի. ու քու
ծառայիդ Դաւիթին տունը քու
25 առջևդ հաստատ թող ։ Քանզի
դուն ո՛վ Աստուած իմ, քու ծա-
ռայիդ յայտնեցիր, որ անոր տուն
պիտի շինես. անոր համար քու ծա-
ռադ իր սրտին մէջ համարձակութիւն
գտաւ քու առջևդ աս աղօթքը ը-
26 նելու ։ Եւ հիմա ո՛վ Տէր՝ ան Աս-
տուածը դուն ես, ու քու ծառա-
յիդ աս աղէկութիւնը խոստացար ։
27 Եւ հիմա *կամք ըրէ՝ քու ծառայիդ
տունը օրհնելու, որ յաւիտեան քու
առջևդ ըլլայ. քանզի դուն օրհնե-
ցիր՝ ո՛վ Տէր, ու յաւիտեան օրհ-
նեալ է ։

Ն. Ք. Գ. Ք. իրր 1042

* Կամ՝ սկսեցիր.

## ԳԼ. ԺԸ

1 Դաւիթ Փղշտացիները ու Մովաբացիները կը նուաճէ ։ 3 Ադրազարը ու Ասորիները կը զարնէ ։ 9 Թովու՝ Ադորամը կը խրկէ ընծաներով՝ Դաւիթը ողջունելու համար ։ 11 Դաւիթ աս ընծաները իր առած աւարներովը մէկտեղ՝ Աստուծոյ կը նուիրէ 13 Եդովմի մէջ պահակապաններ կը դնէ ։ 14 Դաւիթին պաշտօնատարները ։

իրր 1040
ᵃ Բ Թագ. Ը. 1, ևն.

1 ᵃԱնկէ ետև Դաւիթ Փղշտացինե-
րը զարկաւ, ու զանոնք նուա-
ճեց, և Գէթը ու անոր գեղերը
2 Փղշտացւոց ձեռքէն առաւ ։ Ետ-
քը Մովաբը զարկաւ. ու Մովա-
բացիք Դաւիթին հարկատու ծա-
3 ռաներ եղան ։ Եւ Դաւիթ՝ Սու-
բայի ᵇԱդրազար թագաւորը Եմա-
թի կողմերը զարկաւ, երբոր Եփ-
րատ գետին վրայ իր †իշխանու-
թիւնը հաստատելու կ'երթար ։
4 Եւ Դաւիթ անկէ հազար կառք

ᵇ Բ Թագ. Ը. 3.
† Եբր. ձեռքը

ᵇ Բ Թագ. Է. 14, 15.
ᶜ Ղուկ. Ա. 33.
ᵈ Բ Թագ. Է. 13.

Ն. Ք. Ծ.
Իրր 1040

* Տես Բ Թագ. Ը. 4 ։
* Կամ՝ կառքերը քակեց , ու անոնցմէ միայն հարիւր կառք պահեց ։

ու եօթը հազար ձիաւոր՝ ու քը-
սան հազար հետեւակ զօրք բըռ-
նեց . և Դաւիթ բոլոր *կառքի
ձիերուն ջիղերը կտրեց , ու անոնց-
մէ միայն հարիւր ձի իրեն համար
5 պահեց" ։ Եւ Դամասկոսի Ասորի-
ները՝ Սուբայի թագաւորին Ադրա-
զարին օգնութիւն ընելու եկան .
ու Դաւիթ Ասորիներէն քսանու-
6 երկու հազար մարդ զարկաւ ։ Եւ
Դաւիթ Դամասկոսի Ասորւոց մէջ
պահապան զօրքեր դրաւ . ու Ասորի-
ները Դաւիթին հարկատու ծառայ
եղան . ու Դաւիթ ուր որ կ'եր-
թար , Տէրը անոր յաջողութիւն
7 կու տար ։ Եւ Դաւիթ՝ Ադրազա-
րին ծառաներուն վրայ եղող ոսկիէ
վահանները առաւ , ու զանոնք Ե-
8 րուսաղէմ բերաւ ։ Եւ Ադրազա-
րին քաղաքներէն՝ Տեբաթէն ու
Քունէն՝ Դաւիթ խիստ շատ պղինձ
առաւ . Զանկէ շինեց Սողոմոն
պղնձէ ծովը , ու սիւները , ու
պղնձէ գործիքները ։
9 Ու Եմաթի թագաւորը †Թովու՝
երբոր լսեց որ Դաւիթ Սուբայի
Ադրազար թագաւորին բոլոր զօր-
10 քերը ջարդեր է , Իր որդին ‡Ադո-
րամը Դաւիթ թագաւորին խրկեց ,
որ անոր բարև ընէ , ու †զանիկայ
օրհնէ" , Ադրազարին դէմ պատե-
րազմ ընելուն ու զանիկայ զարնե-
լուն համար . (քանզի Ադրազարը
Թովուին հետ պատերազմներ կ'ը-
նէր . ) ու անոր՝ ամէն տեսակ ոսկիէ ,
արծաթէ ու պղնձէ անօթներ բե-
11 րեց ։ Դաւիթ թագաւորը զանոնք
ալ Տէրոջը նուիրեց , ան արծա-
թով ու ոսկիով մէկտեղ՝ որ ամէն
ազգերէն՝ Եդովմէն , Մովաբէն ,
Ամմոնի որդիներէն , Փղշտացինե-
12 րէն ու Ամաղեկէն առեր էր ։ Եւ
Շարուհեայի որդին Աբեսսա՝ Աղի
ձորին մէջը *տասնութը հազար
Եդովմայեցի զարկաւ ։
13 ¤Ու Եդովմի մէջ բերդապահ զօր-
քեր դրաւ . և բոլոր Եդովմայեցիք
Դաւիթին ծառայ եղան . ու Դա-
ւիթ ուր որ կ'երթար , Տէրը անոր
յաջողութիւն կու տար ։
14 Եւ Դաւիթ բոլոր Իսրայէլին վը-
րայ թագաւորութիւն ըրաւ , ու
իր բոլոր ժողովուրդին իրաւունք ու
15 արդարութիւն կ'ընէր ։ Եւ Շա-
րուհեայի որդին Յովաբը զօրքե-
րուն վրայ էր . ու Աքիղուդի որդին
Յովսափատը յիշատակաց դպիր
16 էր . Եւ Աքիտովբի որդին Սադովկը
ու Աբիաթարի որդին ^Աբիմելէքը
քահանաներ էին . և *Սուսան ա-
17 տենադպիր էր . Ու Յովիադայի որ-
դին *Բանեան Քերեթիներուն ու
Փելեթիներուն վրայ էր . և Դա-

Գ Թագ. Է. 15, 23 ։ Բ Մն. Գ. 12, 15, 16 ։
† Բ Թագ. Ը. 9 ։
‡ Բ Թագ. Ը. 10 կ'ըսուի Յովրամ ։
† Կամ՝ շնորհաւորութիւն ընէ անոր ։
* Բ Թագ. Ը. 13 ։
¤ Բ Թագ. Ը. 14, ևն ։
^ Բ Թագ. Ը. 17 կ'ըսուի Աքիմելէք ։
* Բ Թագ. Ը. 17 կ'ըսուի Սարայիա ։ Եւ Գ Թագ. Դ. 3 Սիսա ։
* Բ Թագ. Ը. 18 ։

ւիթին որդիքը թագաւորին քովը
նախարարներ էին ։

## ԳԼ. ԺԹ

1 Դաւիթ դեսպաններ կը խրկէ Նաասի որդին Անոնը մխիթարելու . բայց անիկայ անարգանօք կը վարուի անոնց հետ ։ 6 Ամմոնացիք թէև Ասորիներէն օգնութիւն կը գտնեն , բայց Յովաբէն ու Աբեսսայէն կը յաղթուին ։ 16 Ասորւոց զօրագլուխը Սովբակ նոր ձեռնտուութիւն մը կ'ընէ Ամմոնացիներուն . իսկ ինքը Դաւիթէն կը սպաննուի ։

Ն. Ք. Ծ.
Իրր 1040

Իրր 1037
Բ Թագ. Ժ. 1, ևն ։

1 Ու անկէ ետև Ամմոնի որդւոց
թագաւորը Նաաս մեռաւ , ու
անոր տեղը՝ անոր որդին թագաւոր
2 եղաւ ։ Եւ Դաւիթ ըսաւ . Նաասի
որդւոյն Անոնին մարդասիրութիւն
ընեմ . քանզի անոր հայրը ինծի
մարդասիրութիւն ըրաւ . ու Դա-
ւիթ դեսպաններ խրկեց , որ զանի-
կայ իր հօրը վրայով մխիթարեն .
ու Դաւիթին ծառաները Ամմոնի
որդւոց երկիրը Անոնին գացին՝ զա-
3 նիկայ մխիթարելու համար ։ Եւ
Ամմոնի որդւոց իշխանները Անոնին
ըսին . Միթէ Դաւիթ քու հայրդ
քու առջևդ պատուելո՞ւ համար
քեզի մխիթարիչներ խրկեց . միթէ
անոր ծառաները աս երկիրը քննե-
լու , տակնուվրայ ընելու , ու լրտե-
4 սելու համար չեկա՞ն քեզի ։ Եւ
Անոն՝ Դաւիթին ծառաները բըռ-
նեց , ու զանոնք ածիլեց , և անոնց
հանդերձներուն ալ կէսը՝ մինչև
նստոյ տեղը կտրել տուաւ , և անանկ
5 խրկեց զանոնք ։ Ու գացին՝ ան
մարդիկներուն ըրածը իմացուցին Դա-
ւիթին պատմեցին . ան ալ զանոնք
դիմաւորելու մարդ խրկեց . քանզի
ան մարդիկները շատ անարգուեր
էին . ու թագաւորը ըսաւ . Երի-
քովի մէջ նստէք՝ մինչև որ մօրուք-
նիդ աճի , ու ետքը դարձէք ։
6 Եւ Ամմոնի որդիքը տեսնելով որ
Դաւիթին հետ աւրուեցան , Անոնը
ու Ամմոնի որդիքը հազար տաղանդ
արծաթ խրկեցին , որ Միջագետաց
Ասորիներէն , ու Մաաքայի Ասո-
րիներէն , ու *Սուբայէն վարձքով
7 կառքեր ու ձիաւորներ բռնեն ։ Եւ
անոնք իրենց վարձքով բռնեցին
երսունուերկու հազար կառք , ու
Մաաքայի թագաւորը . և անոր
զօրքը , որոնք գացին Մեդաբային
առջևը բանակեցան . Ամմոնի որ-
դիքն ալ իրենց քաղաքներէն ժող-
վուեցան , ու պատերազմելու գա-
ցին ։
8 Ու երբոր Դաւիթ աս լսեց , Յո-
վաբը ու բոլոր զօրաւոր զօրքերը
9 խրկեց ։ Եւ Ամմոնի որդիքը ե-
լան , ու քաղաքին դրանը առջևը
կարգաւ պատերազմի շարուեցան ։
ու օգնութեան եկող թագաւորները

* Բ Թագ. Ժ. 6 ։

Ն. Ք. ԶՓ. Թւ. 1037

10 դաշտի մէջ զատ կայներ էին ։ Եւ
Յովաբ երբոր տեսաւ որ պատերազ-
մը առջեւէն ու ետեւէն իր վրայ կը
հասնի , Իսրայէլի բոլոր ընտրուած
մարդիկներէն ընտրեց , ու Ասորւոց
11 դէմ պատերազմի շարեց ։ Եւ մնա-
ցած զօրքը իր եղբօրը Աբեսային
յանձնեց ․ ու անոնք Ամմոնի որ-
12 դւոցը դիմացը շարուեցան ։ Եւ ը-
սաւ ․ Թէ որ Ասորիները զիս յաղ-
թելու ըլլան , ինծի օգնութեան
հասնիս ․ ու թէ որ Ամմոնի որդիքը
քեզ յաղթելու ըլլան , ես քեզի
13 օգնութեան պիտի հասնիմ ․ Քա-
ջասիրտ եղիր , ու մեր ժողովուրդին
համար և մեր Աստուծոյն քաղաք-
ներուն համար ուժով պատերազ-
մինք ․ և Տէրը իր աչքին հաճոյ երե-
14 ցածը թող ընէ ։ Ու Յովաբ իր
հետը եղող զօրքով Ասորիներուն
մօտեցաւ , որ անոնց դէմ պատե-
րազմ ընէ ․ ու անոնք անոր առջեւէն
15 փախան ։ Եւ Ամմոնի որդիքը Ա-
սորւոց փախչիլը տեսնելով , իրենք
ալ անոր եղբօրը Աբեսային առ-
ջեւէն փախան , ու քաղաքը մտան ։
Եւ Յովաբ Երուսաղէմ եկաւ ։

Թւ. 1036

16 Երբոր Ասորիները տեսան որ ի-
րենք Իսրայէլին առջեւ կոտրուե-
ցան , դեսպաններ խրկեցին , ու
գետին անդիի կողմը եղող Ասորի-
ները դուրս հանեցին ․ և անոնց առ-
ջեւէն Ադրաազարին զօրագլուխը Սով-
17 բակը կ'երթար ։ Ու երբոր Դաւի-
թին պատմեցին , անիկայ բոլոր
Իսրայէլը ժողվելով , Յորդանանէն
անցաւ , ու անոնց վրայ գնաց , և
անոնց դէմ գունդեր շարեց ․ ու
երբոր Դաւիթ՝ Ասորիները պատե-
րազմով դիմաւորելու համար գուն-
դեր շարեց , անոնք անոր հետ պա-
18 տերազմ ըրին ։ Եւ Ասորիները
Իսրայէլին առջեւէն փախան ․ ու
Դաւիթ՝ Ասորիներէն եօթը հազար
կառքի մարդ , ու քառասուն հազար
հետեւակ զօրք կոտորեց , ու Սովբակ
19 զօրագլուխն ալ մեռցուց ։ Եւ Ադ-
րաազարին ծառաները երբոր տեսան
որ Իսրայէլին առջեւ յաղթուեցան ,
Դաւիթին հետ հաշտութիւն ըրին ,
ու անոր ծառայ եղան ․ և Ասորի-
ները անկէ ետքը Ամմոնի որդւոցը
օգնել չուզեցին ։

## ԳԼ. Ի

1 Յովաբ Ռաբբան կը պաշարէ ․ Դաւիթ ա-
ւարը կ'առնէ , ու ան տեղի ժողովուրդը կը
տանջէ ։ 4 Փղշտացւոց իրեք անգամ յաղ-
թուած ատենը իրեք հսկաներ կը սպաննուին ։

Թւ. 1035
Բ Թագ. ԺԱ. 1
* Եբր. զօ-
րութիւնը

1 Եւ հետեւեալ տարին՝ թագաւոր-
ներուն պատերազմի ելլելու ատե-
նը , Յովաբ՝ զօրքերուն բոլոր
*գունդերը հանեց , և Ամմոնի որ-
դւոցը երկիրը աւրեց , ու գնաց
Ռաբբան պաշարեց ․ բայց Դաւիթ
Երուսաղէմ կը նստէր ․ ու Յովաբ
Ռաբբան զարկաւ , ու զանիկայ
2 կործանեց ։ Եւ Դաւիթ անոնց
թագաւորին թագը անոր գլխուն
վրայէն առաւ , ու զանիկայ գտաւ
որ տաղանդ մը ոսկիի ծանրութիւն
ունէր , և անոր վրայ պատուական
քարեր կար ․ ու Դաւիթին գլուխը
դրուեցաւ ․ և այն քաղաքէն
3 խիստ շատ աւար առաւ ։ Ու անոր
մէջը եղած ժողովուրդը հանեց , ու
զանոնք սղոցներով՝ երկաթէ կամնա-
սայլներով ու տապարներով կտրեց ․
և Դաւիթ Ամմոնի որդւոցը բոլոր
քաղաքներուն այսպէս ըրաւ ․ ու
Դաւիթ բոլոր ժողովուրդով Երու-
սաղէմ դարձաւ ։

Ն. Ք. ԶՓ. Թւ. 1035
Բ Թագ. ԺԲ. 26
Թւ. 1033
Բ Թագ. ԺԲ. 30, 31

Թւ. 1018
Բ Թագ. ԻԱ. 18
Ա Գլ. ԺԱ. 29

4 Եւ անկէ ետքը՝ Գազերի մէջ
Փղշտացւոց հետ պատերազմ եղաւ ․
ան ատենը Ուսացի Սովբաքը՝ Ռա-
փայի որդւոցմէ եղող Սեփիան մեռ-
ցուց , ու անոնք նուաճեցան ։
5 Եւ նորէն Փղշտացւոց հետ պա-
տերազմ եղաւ ․ ու Յայիրի որդին
Եղէանանը՝ Գեթացի Գողիաթին
եղբայրը Ղեեմին զարկաւ , որուն
նիզակին բունը ոստայնանկաց գլա-
նին պէս էր ։
6 Եւ նորէն Գեթի մէջ պատե-
րազմ եղաւ ․ ու մէկ երկայնահա-
սակ մարդ մը կար , որուն մատերը
վեց վեց ըլլալով՝ քսանուչորս մատ
ունէր ․ անիկայ ալ Ռափայի որ-
7 դւոցմէ էր ։ Եւ անիկայ Իսրա-
յէլը նախատեց ․ բայց Դաւիթին
եղբօրը Սամային որդին Յովնա-
8 թանը զանիկայ զարկաւ ։ Ասոնք
Գեթի մէջ Ռափայէն ծներ էին ․ և
Դաւիթին ձեռքովը ու անոր ծա-
ռաներուն ձեռքովը ինկան ։

Բ Թագ. ԻԱ. 19 Եբր. Արի-
ովրգիմ

Բ Թագ. ԻԱ. 20

## ԳԼ. ԻԱ

1 Դաւիթ Սատանայէն փորձուելով՝ կը ստիպէ
Յովաբը որ ժողովուրդը համրէ ։ 5 Երբոր ժո-
ղովուրդին թիւը կը բերեն՝ Դաւիթ իր ըրածին
համար կը զղջայ ։ 9 Գադ մարգարէին ձեռ-
քովը առաջարկուած իրեք հարուածներէն՝
Դաւիթ ժանտախտը կ'ընտրէ ։ 14 Եօթանա-
սուն հազար հոգի մեռնելէն ետքը ․ Դաւիթ
ապաշխարելով՝ Երուսաղէմին կործանմանը
առջեւը կ'առնէ ։ 18 Դաւիթ՝ Գադին ծանուցա-
նելովը Ոռնային կալը ծախու կ'առնէ , ու հոն
սեղան մը կը շինէ ․ ասոր վրայ Աստուած իր
հաճութեանը նշան մը կու տայ կրակով , ու
ժանտախտը կը դադրեցընէ ։ 28 Դաւիթ հոն
ողջակէզ կը մատուցանէ ․ քանզի հրեշտակէն
վախնալուն համար՝ չէր կրնար մինչև Գաբա-
ւոն երթալ ։

1017
Ա Բ Թագ. ԻԴ. 1, Ա.

1 Եւ Սատանան Իսրայէլին դէմ ե-
լաւ , ու Դաւիթը դրդեց որ
2 Իսրայէլը համրէ ։ Եւ Դաւիթ՝
Յովաբին ու ժողովուրդին իշխան-
ներուն ըսաւ ․ Գացէ՛ք Իսրայէլը
համրեցէ՛ք Բերսաբէէն մինչև Դան ,
ու համարը ինծի բերէ՛ք , որ գիտ-

Ա Գլ. ԻԷ. 23

Ն․ Ք․ Գ․ 1017

3 նամ ։ Եւ Յովաբ ըսաւ․ Տէրը՝
իր ժողովուրդը որչափ որ է, հա-
րիւրապատիկ աւելցընէ․ ով տէր
իմ թագաւոր՝ միթէ անոնց ամէնը
իմ տիրոջս ծառաները չե՞ն․ իմ
տէրս ինչո՞ւ աս բանը կը փնտռէ ։
ինչո՞ւ համար աս բանը Իսրայէլին
4 յանցանքի պատճառ ըլլայ ։ Բայց
երբոր թագաւորին խօսքը Յովա-
բին վրայ սաստկացաւ, Յովաբ ե-
լաւ, ու բոլոր Իսրայէլի մէջ պտը-
տեցաւ, ու Երուսաղէմ եկաւ ։
5 Եւ Յովաբ ժողովուրդին համրան-
քին ցուցակը Դաւիթին տուաւ․
ու Իսրայէլին ամէնը՝ հազար ան-
գամ հազար ու հարիւր հազար
սուր քաշող մարդ էր․ և Յուդան
չորս հարիւր եօթանասուն հազար
6 սուր քաշող մարդ էր ։ ‡Սակայն
Ղևտացիները ու Բենիամինեանները
անոնց մէջ չհամրեց․ քանզի թա-
գաւորին աս հրամանը Յովաբին
զզուելի էր ։
7 Եւ աս բանը Աստուծոյ առջևը
գէշ երևնալուն համար՝ Իսրայէլը
8 զարկաւ ։ Ու Դաւիթ Աստուծոյ
ըսաւ․ Աս բանը ընելովս ‖մեծ
մեղք գործեցի․ ‡ու հիմա կ’աղա-
չեմ՝ քու ծառայիդ մեղքը ներէ,
քանզի մեծ յիմարութիւն ըրի ։
9 Եւ Տէրը Դաւիթին Ղտեսանո-
ղին՝ Գադին խօսեցաւ ու ըսաւ․
10 Գնա ու Դաւիթին խօսէ՝ ըսելով․
Տէրը այսպէս կ’ըսէ․ Ես քեզի իրեք
բան կ’առաջարկեմ․ անոնցմէ մէկը
11 ընտրէ որ քեզի ընեմ ։ Եւ Գադ՝
Դաւիթին եկաւ ու անոր ըսաւ․
Տէրը այսպէս կ’ըսէ․ Ընտրէ քեզի՝
12 ‡կամ իրեք տարուան սով, կամ
իրեք ամիս քու թշնամիներուդ ե-
րեսէն փախչիս, ու քու թշնա-
միներուդ սուրը քեզ հասնի, և
կամ իրեք օր Տէրոջը սուրը՝ այ-
սինքն ժանտախտ ըլլայ երկրիս մէ-
ջը, ու Տէրոջը հրեշտակը Իսրայէ-
լին բոլոր սահմաններուն մէջը կո-
տորած ընէ․ և հիմա տես, զիս
խրկողին ի՞նչ պատասխան տանիմ ։
13 Ու Դաւիթ ըսաւ Գադին․ Խիստ
մեծ նեղութեան մէջ եմ․ հիմա
Տէրոջը ձեռքը իյնամ, քանզի ա-
նոր ողորմութիւնը խիստ շատ է ։ ու
14 մարդու ձեռք չիյնամ ։ Եւ Տէրը
Իսրայէլին վրայ ժանտախտ խրկեց,
ու Իսրայէլէն եօթանասուն հազար
15 մարդ ինկաւ ։ Եւ Աստուած հը-
րեշտակ մը խրկեց Երուսաղէմ,
որ զանիկայ կորսնցընէ․ ու երբ-
որ կը կորսնցընէր, Տէրը նա-
յեցաւ ; ‡ու աս չարիքին վրայ
սիրտը իջաւ, և կոտորած ընող
հրեշտակին ըսաւ․ Հերի՛ք է, ալ
ձեռքդ քաշէ․ ու Տէրոջը հրեշտա-
կը Յեբուսացի Որնային կալին քո-
16 վը կայներ էր ։ Եւ Դաւիթ իր
աչքերը վերցուց, ու ‡Տէրոջը հրեշ-
տակը տեսաւ, որ երկրին ու եր-
կինքին միջտեղը կայներ էր, ու
ձեռքը մերկ սուր մը կար, որ
Երուսաղէմի վրայ երկընցուցեր էր․
ան ատենը Դաւիթ ու ծերերը
քուրձեր հագած՝ երեսնուն վրայ
17 ինկան ։ Եւ Դաւիթ Աստուծոյ
ըսաւ․ Ահա՛ ես պատուիրեցի որ
ժողովուրդը համրեն, ու ես եմ որ
մեղանչեցի, ու մեծ չարութիւն ը-
րի․ բայց աս ոչխարները ի՞նչ ը-
րին․ ով Տէր Աստուած իմ՝ քու
ձեռքդ իմ վրաս ու իմ հօրս տանը
վրայ ըլլայ․ բայց քու ժողովուր-
դիդ վրայ չըլլայ *զանիկայ բնա-
ջնջ ընելու համար ։
18 Եւ ‡Տէրոջը հրեշտակը Գադին
ըսաւ․ Դաւիթին ըսէ որ ելլէ,
ու Յեբուսացի Որնային կալին
մէջ Տէրոջը սեղան մը կանգնէ ։
19 Եւ Դաւիթ վեր ելաւ՝ Գադին Տէ-
րոջը անունովը ըսած խօսքին հա-
20 մեմատ ։ Ու Որնա դարձաւ, ու
հրեշտակը տեսաւ, և իր չորս որ-
դիքը իր հետը պահուեցան․ (քան-
21 զի Որնա ցորեն կը ծեծէր ։) Ու
Դաւիթ Որնային եկաւ․ և Որնա
նայեցաւ, ու Դաւիթը տեսնելով՝
կալէն ելաւ, ու երեսը մինչև գե-
տինը Դաւիթին երկրպագութիւն
22 ըրաւ ։ Ան ատենը Դաւիթ Որ-
նային ըսաւ․ Աս կալին տեղը ինծի
տուր, որ հոն Տէրոջը սեղան մը
շինեմ, (զանիկայ լեցուն գնով
տուր ինծի,) ու ժողովուրդին
23 վրայէն հարուածը վերնայ ։ Եւ
Որնա՝ Դաւիթին ըսաւ․ Զանի-
կայ քեզի առ․ ու իմ տէրս թա-
գաւորը իր աչքին աղէկ երևցածը
թող ընէ․ ահա՛ եզները ողջակէզի
համար, ու կամնասայլները փայտի
համար, ու ցորենը հացի ընծայի
համար կու տամ, ամէնն ալ կու
24 տամ ։ Եւ Դաւիթ թագաւորը
Որնային ըսաւ․ Չէ, հապա զանոնք
անշուշտ լեցուն գնով ծախու պի-
տի առնեմ․ քանզի քուկդ եղածը
Տէրոջը համար պիտի չառնեմ, ոչ
ալ ձրի առած ողջակէզ մատու-
25 ցանեմ ։ Ու ‡Դաւիթ ան տեղւոյն
համար՝ կշիռքով վեց հարիւր սիկղ
26 ոսկի տուաւ Որնային ։ Եւ Դա-
ւիթ հոն Տէրոջը սեղան շինեց, ու
անոր վրայ ողջակէզներ ու խաղա-
ղութեան զոհեր մատուց, և Տէրո-
ջը աղաղակեց․ ու ‡երկինքէն կրա-
կով՝ ողջակէզի սեղանին վրայ ա-
27 նոր պատասխան տուաւ ։ Եւ Տէ-
րը հրեշտակին խօսեցաւ, ու անի-
կայ սուրը իր պատեանը դարձուց ։

‡ Գլ․ իէ․ 24։
‖ բ Թագ․ իդ․ 10։
‡ բ Թագ․ ժբ․ 13։
Ղ Տես ա Թագ․ թ․ 9։
‡ բ Թագ․ իդ․ 13։
‡ բ Թագ․ իդ․ 16։
‡ Տես Ծն․ զ․ 6։

Ն․ Ք․ Գ․ 1017
‡ բ Մն․ գ․ 1։
* Եբր․ հարուածին համար։
‡ բ Մն․ գ․ 1։
‡ բ Թագ․ իդ․ 24։
‡ Ղև․ թ․ 24։ բ Մն․ գ․ 1։ է․ 1։

Ն. Ք. ԳՌ.
1017

ծ Գլ. ԺԶ. 39։

կ Գթագ. Գ. 4։ Գլ. ԺԶ. 39։ Բ Մն. Ա. 3։

28 Ան ատենը Դաւիթ տեսնելով որ
Տէրը Յեբուսացի Որնանին կալին
մէջ իրեն պատասխան տուաւ, ան
29 տեղը զոհեր մատուց։ Իսկ Մովսէ-
սին՝ անապատին մէջ շինած ծ Տէ-
րոջը խորանը ու ողջակէզի սեղանը՝
ան ատենը կ Գաբաւոնի բարձր տեղն
30 էր. Բայց Դաւիթ Աստուծոյ հար-
ցընելու համար՝ չկրցաւ անոր առ-
ջեւը երթալ, քանզի Տէրոջը հրեշ-
տակին սուրին երեսէն վախցաւ։

ԳԼ. ԻԲ

1 Դաւիթ՝ տաճարին համար որոշուած տեղը գիտնալով՝ անոր շինութեանը հարկաւոր եղած բաները առատօրէն կը պատրաստէ. 6 ու Սողոմոնին կ'իմացընէ Աստուծոյ խոստումնքները, ու նաեւ անոր պարտաւորութիւնը տաճարը շինելու վրայով. 17 իշխաններուն կը պատուիրէ, որ իր որդւոյն ձեռնտու ըլլան։

ա Բ Օր. ԺԲ. 5։ Բ Թագ. ԻԴ. 18։ Գլ. ԻԱ. 18, 19, 26, 28։ Բ Մն. Գ. 1։

բ Գ Թագ. Թ. 21։

գ Հմր 14։ Գ Թագ. Է. 47։

դ Գ Թագ. Ե. 6։

ե Գլ. ԻԹ. 1։

զ Բ Թագ. Է. 2։ Գ Թագ. Ը. 17։ Գլ. ԺԷ. 1։ ԻԸ. 2։

է Բ Օր. ԺԲ. 5, 11։

ը Գ Թագ. Ե. 3։ Գլ. ԻԸ. 3։

թ Գլ. ԻԸ. 5։

ժ Գ Թագ. Դ. 25։ Ե. 4։

* Այսինքն՝ խաղաղարար։

1 Եւ Դաւիթ ըսաւ. ա Ասիկայ է
Տէր Աստուծոյն տունը, ու ա-
սիկայ է Իսրայէլի ողջակէզին սե-
2 ղանը ։ Եւ Դաւիթ հրամայեց որ
Իսրայէլի երկրին մէջ գտնուող բ օ-
տարազգիները ժողվեն. ու Աստու-
ծոյ տունը շինելու համար՝ քարա-
հատներ դրաւ, որ տաշուած քարեր
3 պատրաստեն ։ Եւ Դաւիթ դրան
փեղկերուն բեւեռներուն համար ու
շրջանակներուն համար՝ խիստ շատ
երկաթ պատրաստեց, եւ այնչափ
շատ պղինձ՝ գ որ կշիռքի չէր գար.
4 Ու պատրաստած եղեւնափայտին համ-
րանքը չկար. քանզի դ Սիդոնացիք
եւ Տիւրացիք Դաւիթին շատ եղե-
ւնափայտեր կը բերէին ։
5 Եւ Դաւիթ ըսաւ. ե Իմ որդիս
Սողոմոնը փափուկ տղայ մըն է, ու
Տէրոջը շինուելու տունը մեծ՝ բար-
ձըր՝ ու ամէն երկիրներու մէջ ա-
նուանի ու փառաւոր պիտի ըլլայ.
հիմա անոր համար պատրաստու-
թիւն տեսնեմ. եւ Դաւիթ իր մեռ-
նելէն առաջ՝ խիստ շատ պատրաս-
6 տութիւն տեսաւ։ Ետքը իր որդին
Սողոմոնը կանչեց, ու անոր պա-
տուիրեց որ Իսրայէլի Տէր Աստու-
ծոյն տուն շինէ ։
7 Ու Դաւիթ Սողոմոնին ըսաւ.
Որդեակ իմ՝ զ Սրտիս մէջը ունեցայ
է որ իմ Տէր Աստուծոյս անուանը
8 տուն շինեմ. Բայց Տէրոջը խօսքը
ինծի եղաւ՝ ըսելով. ը Դուն շատ
արիւն թափեցիր, ու մեծ պատե-
րազմներ ըրիր. դուն իմ անուանս
տուն պիտի չշինես. քանզի իմ
առջեւս գետնի վրայ շատ արիւն
9 թափեցիր. թ Ահա քեզի որդի մը
պիտի ծնանի. անիկայ հանգստու-
թեան մարդ պիտի ըլլայ. եւ զանի-
կայ ժ իր ամէն շրջակայ թշնամինե-
րէն պիտի հանգչեցրնեմ. քանզի
անոր անունը * Սողոմոն պիտի ըլ-
լայ. ու անոր օրերուն մէջ Իսրայէ-
լին խաղաղութիւն ու հանդարտու-
10 թիւն պիտի տամ ։ ի Անիկայ իմ
անուանս տուն պիտի շինէ. ու
լ անիկայ ինծի որդի պիտի ըլլայ,
ու ես անոր հայր պիտի ըլլամ. եւ ա-
նոր թագաւորութեան աթոռը Իս-
րայէլի մէջ յաւիտեան պիտի հաս-
11 տատեմ ։ Ուրեմն որդեակ իմ,
խ Տէրը քու հետդ ըլլայ, ու յաջո-
ղութիւն գտնես, եւ քու Տէր Աս-
տուծոյդ տուն շինես, ինչպէս որ
12 քեզի համար խօսեցաւ ։ Միայն
թէ Տէրը ծ քեզի իմաստութիւն ու
հանճար տայ, եւ քեզ Իսրայէլի վը-
րայ հաստատէ, որ քու Տէր Աս-
13 տուծոյդ օրէնքը պահես ։ կ Ան ա-
տենը յաջողութիւն կը գտնես,
երբոր զգուշութեամբ 'ի գործ դնես
ան կանոնները ու դատաստանները,
որոնք որ Տէրը Մովսէսին պատուի-
րեց Իսրայէլի համար. հ զօրացիր
ու քաջասիրտ եղիր, մի'վախնար ու
14 մի' զարհուրիր ։ Եւ ահա ես իմ
† նեղութիւններուս մէջ" Տէրոջը
տանը համար՝ հարիւր հազար տա-
ղանդ ոսկի, ու հազար անգամ հա-
զար տաղանդ արծաթ պատրաս-
տեցի. իսկ պղինձը ու երկաթը շա-
տութեանը համար ձ կշիռքի չգար.
փայտեր ու քարեր ալ պատրաստե-
ցի, ու անոնց վրայ դուն ալ աւել-
15 ցընես ։ Եւ դուն քու քովդ խիստ
շատ արուեստաւորներ, քարահատ-
ներ, որմնադիրներ, հիւսներ, ու
ամէն գործքի համար ամէն տեսակ
16 վարպետ մարդիկները ունիս ։ Ոս-
կիին, արծաթին, պղնձին ու
երկաթին համրանքը չկայ. ելի՛ր,
ու ‡ աս գործին ձեռք զարկ", ու
ղ Տէրը քու հետդ ըլլայ ։
17 Եւ Դաւիթ Իսրայէլի բոլոր իշ-
խաններուն պատուիրեց, որ իր որ-
դւոյն Սողոմոնին ձեռնտու ըլլան.
18 Ու ըսաւ. Ահա ձեր Տէր Աստուա-
ծը ձեր հետն է, ճ եւ անիկայ ձեզ ա-
մէն կողմանէ հանգստացուց. որով-
հետեւ աս երկրիս բնակիչները իմ
ձեռքս տուաւ. ու երկիրը Տէրոջը
առջեւը ու անոր ժողովուրդին առ-
19 ջեւը նուաճեցաւ ։ Եւ հիմա մ ձեր
սիրտը ու ձեր հոգին՝ ձեր Տէր Աս-
տուածը խնդրելու տուէք, ու ե-
լէ՛ք Տէր Աստուծոյն սրբարանը
շինեցէ՛ք, որ յ Տէրոջը ուխտին
տապանակը ու Աստուծոյ սուրբ
անօթները՝ ն Տէրոջը անուանը հա-
մար շինուած տունը տանիք ։

ԳԼ. ԻԳ

1 Դաւիթ ծերացած ըլլալով՝ Սողոմոնը թագաւոր կ'ընէ ։ 2 Ղեւտացւոց թիւը ու դասակարգութիւնը ։ 7 Գերսոնեանց տոհմերը ։

Ն. Ք. ԳՌ.
Իրր 1017

ի Բ Թագ. Է. 13։ Գ Թագ. Ե. 5։ Գլ. ԺԷ. 12, 13։ ԻԸ. 6։

լ Եբր. Ա. 5։

խ Հմր 16։

ծ Գ Թագ. Գ. 9, 12։ Սաղ. ԺԲ. 1։

կ Յես. Ա. 7, 8։ Գլ. ԻԸ. 7։

հ Բ Օր. Լա. 7, 8։ Յես. Ա. 6, 7, 9։ Գլ. ԻԸ. 20։

† Կամ՝ աղքատութեամբս

ձ Հմր 3։

‡ Եբր. ըրէ՛։

ղ Հմր 11։

ճ Բ Օր. ԺԲ. 10։ Յես. ԻԲ. 4։ Բ Թագ. Է. 1։ Գլ. ԻԴ. 25։

մ Բ Մն. Ի. 3։

յ Գ Թագ. Ը. 6, 21։ Բ Մն. Ե. 7։ Զ. 11։

ն Հմր 7։ Գ Թագ. Ե. 3։

Ն. Ք. ԴԲ.
1015

ա Գթագ. ա. 33-39, Գլ. ԻԸ. 5։
ԻՍՐ 1045
բ Թուոց. Գ. 3, 47։
գ Բ Օր. ԺԴ. 18։ Գլ. ԻԴ. 29։ Բ Մն. ԺԹ. 8։
դ Տեառն Բ Մն. ԻԹ. 25, 26։ Ամով. Զ. 5։
ե Ել. Զ. 16։ Թուոց. ԻԶ. 57։ Գլ. Զ. 1, Ա։ Բ Մն. Ը. 14։ ԻԹ. 25։
զ Գլ. ԻԶ. 21։
է Ել. Զ. 18։
ը Ել. Զ. 20։
թ Ել. ԻԸ. 1։ Եբր. Ե. 4։
ժ Ել. Լ. 7։ Թուոց. ԺԶ. 40։ Ա Թագ. Բ. 28։
ի Բ Օր. ԻԱ. 5։
լ Թուոց. Զ. 23։
խ Տեառն Գլ. ԻԶ. 23, 24, 25։
* Եբր. կոչուեցան։
ծ Ել. Բ. 22։ ԺԸ. 3, 4։
կ Գլ. ԻԴ. 20։ ԻԶ. 24։
հ Գլ. ԻԶ. 25։
ձ Գլ. ԻԴ. 22։
ղ Գլ. ԻԴ. 23։

12 Կահաթի որդիքը ։ 21 Մերարիի որդիքը ։ 24 Ղեւտացւոց պաշտօնը ։

1 Եւ Դաւիթ ծերացած ու օրերը
լեցուած ըլլալով, ^ա իր որդին
Սողոմոնը Իսրայէլի վրայ թագաւոր
2 դրաւ ։ Եւ Իսրայէլի բոլոր իշխան֊
ները, նաև քահանաները, ու Ղե֊
3 ւտացիները ժողվեց ։ Ու Ղեւտա֊
ցիները՝ ^բ համրուեցան երեսուն տարեկա֊
նէն վեր եղող էրիկ մարդիկները մէ֊
կիկ մէկիկ համրուելով, անոնց թիւը
4 երեսունութը հազար էր ։ Ե֊
Դաւիթ ըսաւ. Ասոնցմէ քսանու֊
չորս հազարը՝ Տէրոջը տանը գործ֊
քին վրայ, ու վեց հազարը՝ ^գ վե֊
րակացուներ ու դատաւորներ ըլ֊
5 լան, Ու չորս հազարը՝ դռնապան
ներ, ու չորս հազարը՝ օրհնելու հա֊
մար ^դ շինած նուագարաններովս՝
6 Տէրոջը օրհնիչները ըլլան ։ Եւ
^ե Դաւիթ զանոնք բաժնեց, Ղեւիի
որդւոցը՝ Գերսոնին, Կահաթին
ու Մերարիին դասակարգութիւն֊
ները որոշելով ։
7 ^զ Գերսոնեաններէն՝ Ղադան ու
8 Սեմէի էին. Ղադանին որդիքը՝
առջինը Յեքիէլ, ետքը Զեթամ,
9 ու Յովէլ՝ իրեք էին ։ Սեմէիին որ֊
դիքը՝ Սաղոմոթ, Ազիէլ ու Արան՝
իրեք էին. ասոնք Ղադանին տոհ֊
10 մերուն իշխաններն էին ։ Եւ Սե֊
մէիին որդիքը՝ Յեթ, Զիզա, Յե֊
ուս ու Բարիա էին. ասոնք Սեմէի֊
11 ին որդիքը՝ չորս հոգի էին ։ Եւ
առջինը՝ Յեթ, ու երկրորդը՝ Զի֊
զա էր. բայց Յեուս ու Բարիա
շատ որդիներ չունենալնուն հա֊
մար, մէկ ազգատոհմ համրուե֊
ցան ։
12 ^է Կահաթի որդիքը՝ Ամրամ, Ի֊
սահառ, Քեբրոն ու Ոզիէլ՝ չորս
13 էին ։ ^ը Ամրամին որդիքը՝ Ահարոն
ու Մովսէս էին. և ^թ Ահարոն ինքը՝
ու իր որդիքը յաւիտեան որոշուե֊
ցան՝ ամենասուրբ բաներու մէջ
իրենց սուրբ պաշտօնը կատարելու,
^ժ Տէրոջը առջևը խունկ ծխելու,
^ի անոր ծառայութիւն ընելու, ու
^լ անոր անունովը յաւիտեան օրհնե֊
14 լու համար ։ Եւ Աստուծոյ մար֊
դուն՝ Մովսէսին ^խ որդիքը՝ Ղեւիի
15 ցեղին հետ * համրուեցան ։ ^ծ Մով֊
սէսին որդիքը՝ Գերսամ ու Եղիա֊
16 զար էին ։ Գերսամին որդիքը՝ առ֊
17 ջինը ^կ Սուբայէլ էր. Ու Եղիազարին
որդիքը՝ առջինը ^հ Հռաբիա էր.
ու Եղիազար ուրիշ որդիներ չու֊
նէր. բայց Հռաբիային որդիքը
18 խիստ շատցան ։ Իսահառին որդի֊
19 քը՝ առջինը ^ձ Սաղոմոթ էր ։ ^ղ Քեբ֊
րոնին որդիքը՝ առջինը Յերիա,
երկրորդը՝ Ամարիա, երրորդը՝ Յա֊
զիէլ, չորրորդը՝ Յեկամամ էր ։

20 Ոզիէլին որդիքը՝ առջինը Միքա,
երկրորդը՝ Յեսիա էր ։
21 ^ճ Մերարիի որդիքը՝ Մոողի ու
Մուսի էին. Մոողիին որդիքը՝ Ե֊
22 ղիազար ու ^մ Կիս էին ։ Ու Եղիա֊
զար մեռաւ. ^յ անիկայ որդիներ
չունէր, հապա միայն աղջիկներ ու֊
նէր. ու ^ն զանոնք իրենց եղբայրնե֊
23 րը Կիսին որդիքը առին ։ ^շ Մու֊
սիին որդիքը՝ Մոողի, Եդեր ու
Յերիմովթ՝ իրեք էին ։
24 Ասոնք ^ո Ղեւիի որդիքն էին իրենց
ազգատոհմերուն համեմատ, ու
անունով մէկիկ մէկիկ համրուած
^չ քսան տարեկանէն վեր՝ Տէրոջը
տանը սպասաւորութիւնը կատա֊
րողներուն տոհմապետներն էին ։
25 Քանզի Դաւիթ ըսեր էր. Իսրա֊
յէլի Տէր Աստուածը ^պ իր ժողո֊
վուրդը հանգստացուց, ու յաւի֊
տեան Երուսաղէմի մէջ պիտի բը֊
26 նակի. Ու Ղեւտացիք ալ՝ ^ջ խորանը
ու անոր պաշտօնին ամէն անօթ֊
ները՝ ալ այսուհետեւ պիտի չկը֊
27 րեն ։ Քանզի Դաւիթին վեր֊
ջին խօսքերովը՝ Ղեւիի որդւոց֊
մէ քսան տարեկանէն վեր եղողնե֊
28 րը համրուեցան. Որովհետև ա֊
նոնց պաշտօնը՝ Տէրոջը տանը ծա֊
ռայութեանը մէջ Ահարոնի որդւո֊
ցը օգնութիւն ընել, գաւիթներու՝
ու սենեակներու վերակացու ըլլալ,
բոլոր սուրբ բաները մաքրել, ու
Աստուծոյ տանը ծառայութիւնը
29 կատարել էր. Նաև ^ռ առաջաւո֊
րութեան հացին, ու հացի ընծայի
^ս նաշիհին, և ^վ անխմոր լաւաշնե֊
րուն, ու ^տ տապակի մէջ եփած և
տապկուած բաներուն, ու ^ր բոլոր
չափերուն վերակացութիւնը ընել,
30 Եւ ամէն առտու ու իրիկուն՝ Տէրը
օրհնելու ու գովելու համար ոտքի
31 վրայ կայնիլ, Ու ^ց շաբաթ օրերը,
^ւ ամսագլուխները, ու ^փ մեծ տօ֊
ներու մէջ Տէրոջը բոլոր ողջակէզ֊
ները իրենց թիւովը ու իրենց օրէն֊
քովը՝ միշտ Տէրոջը առջևը մատու֊
32 ցանել, Ու Տէրոջը տանը ծառա֊
յութեանը համար ^ք ժողովքի խո֊
րանին պահպանութիւնը, և սըր֊
բարանին պահպանութիւնը, ու
^օ իրենց եղբայրներուն՝ Ահարոնի որ֊
դւոցը պահպանութիւնը ընել էր ։

Ն. Ք. ԴԲ.
1045
ճ Գլ. ԻԴ. 26։
մ Գլ. ԻԴ. 29։
յ Գլ. ԻԴ. 28։
ն Տեառն Թուոց. ԼԶ. 6, 8։
շ Գլ. ԻԴ. 30։
ո Թուոց. Ժ. 17, 21։
չ Հմր 27։ Տեառն Թուոց. Ա. 3։ Դ. 3։ Ը. 24։ Եզր. Գ. 8։
պ Գլ. ԻԲ. 18։
ջ Թուոց. Դ. 5, Ա։
ԻՍՐ 1015
ռ Ել. ԻԵ. 30։
ս Ղև. Զ. 20։ Գլ. Թ. 29, Ա։
վ Ղև. Բ. 4։
տ Ղև. Բ. 5, 7։
ր Ղև. ԺԹ. 35։
ց Թուոց. Ժ. 10։ Սաղ. ձա. 3։
փ Ղև. ԻԳ. 4։
ք Թուոց. Ա. 53։
օ Թուոց. Գ. 6—9։

## ԳԼ. ԻԴ

1 Ահարոնի որդւոցը վիճակով քսանուչորս դասակարգութիւններու բաժնուիլը ։ 20 Կահաթեանք 27 ու Մերարեանք վիճակով կը բաժնուին ։

1 Եւ Ահարոնի որդւոցը դասակար֊
գութիւնները ասոնք էն. ^ա Ահա֊
րոնի որդիքը՝ Նադաբ, Աբիուդ,
2 Եղիազար ու Իթամար էին ։ Եւ

ա Ղև. Ժ. 1, 6։ Թուոց. ԻԶ. 60։

Ն. Ք. ԴՓ. 1015

բ Թուոց. գ. 4. ԻԶ. 61.

բՆադաբ ու Աբիուդ իրենց հօրը
առջեւ մեռան, ու անոնք որդիներ
չունէին. ու Եղիազար ու Իթամար
3 քահանայ եղան։ Եւ Դաւիթ, ու
Եղիազարի որդիներէն Սադովկ, ու
Իթամարի որդիներէն Աքիմելէք՝
զանոնք բաժնեցին իրենց համրան-
4 քովը իրենց պաշտօնին համար։ Ու
Եղիազարի որդւոցը մէջ գտնուած
իշխանները՝ Իթամարի որդւոցը
մէջ գտնուածներէն շատ էին. ու
զանոնք այսպէս բաժնեցին. Եղիա-
զարի որդւոցը համար տասնուվեց
իշխան՝ իրենց ազգատոհմերուն
համեմատ, ու Իթամարի որդւոցը
համար ութը իշխան՝ իրենց ազգա-
5 տոհմերուն համեմատ։ Եւ ասոնք
ու անոնք վիճակով բաժնուեցան.
քանզի սրբարանին իշխանները ու
Աստուծոյ տանը իշխանները՝ Եղիա-
զարի որդիներէն ու Իթամարի որ-
6 դիներէն էին։ Ու Ղեւտացիներէն՝
Նաթանայելի որդին Սեմայիա դը-
պիրը՝ թագաւորին ու իշխաննե-
րուն, և Սադովկ քահանային, ու
Աբիադարի որդւոյն Աքիմելէքին,
և քահանայից ու Ղեւտացւոց նա-
հապետներուն առջեւ՝ մէկ ազգա-
տոհմ մը Եղիազարէն առնելով, ու
մէկ ազգատոհմ մը Իթամարէն առ-
նելով՝ զանոնք գրեց։
7 Եւ առաջին վիճակը՝ Յովարիբին
8 ելաւ, երկրորդը՝ Յեդայիային, Եր-
րորդը՝ Հարիմին, չորրորդը՝ Սէ-
9 ուրիմին, Հինգերորդը՝ Մեղքիա-
10 յին, վեցերորդը՝ Միամինին, Եօթ-
ներորդը՝ Ակկուսին, ութերորդը՝
11 գԱբիային, Իններորդը՝ Յեսուին, — գ Նեեմ. ԺԲ. 4. 17. Ղուկ. Ա. 5.
12 տասներորդը՝ Սէքենիային, Մետա-
սաներորդը՝ Եղիասիբին, երկոտա-
13 սաներորդը՝ Յակիմին, Երեքտա-
սաներորդը՝ Ոփփային, չորեքտա-
14 սաներորդը՝ Յեսբէաբին, Հնգետա-
սաներորդը՝ Բեղգային, վեշտասա-
15 ներորդը՝ Եմմերին, Եօթնուտաս-
ներորդը՝ Եզիրին, ութուտասնե-
16 րորդը՝ Ափեսեսին, Իննուտասնե-
րորդը՝ Փեթայիային, քսաներոր-
17 դը՝ Եզեկիելին, Քսանումէկերորդը՝
Յաքինին, քսանուերկուերորդը՝
18 Գամուլին, Քսանուիրեքերորդը՝
Դաղայիային, քսանուչորսերորդը՝
19 Մաազիային։ Աս է անոնց կար-
գադրութիւնը իրենց պաշտաման-
ցը համար, — դ Գլ. Թ. 25.
որ դՏէրոջը տունը
մտնելու համար՝ իրենց հօրը Ահա-
րոնին ձեռքովը իրենց առած օ-
րէնքին համեմատ, ինչպէս որ Իս-
րայէլին Տէր Աստուածը անոր պա-
տուիրեր էր։
20 Ու Ղեւիի որդւոցը մնացորդները
ասոնք էին. Ամրամի որդիներէն՝
եՍուբայէլ. Սուբայէլին որդիներէն՝ — ե Գլ. ԻԳ. 16.

Ն. Ք. ԴՓ 1015

21 Յադայիա. զՀռաբիայէն՝ այսինքն
Հռաբիային որդիներէն առջինը՝ — զ Գլ. ԻԳ. 17.
22 Յեսիա. Իսահառի որդիներէն՝
էՍաղոմօթ. Սաղոմօթին որդինե- — է Գլ. ԻԳ. 18.
23 րէն՝ Յեթ. Ու ըՔեբրոնի որդիներէն — ը Գլ. ԻԳ. 19. ԻԶ. 31.
առջինը՝ Յերիա, երկրորդը՝ Ամա-
րիա, երրորդը՝ Յազիէլ, չորրորդը՝
24 Յեկամամ. Ոզիելի որդիներէն՝ Մի-
քա. Միքային որդիներէն՝ Սամիր.
25 Միքային եղբայրը՝ Յեսիա. Յե-
սիային որդիներէն՝ Զաքարիա։
26 թՄերարիի որդիքը Մոողի ու Մու- — թ Ել. Զ. 19. Գլ. ԻԳ. 21.
սի էին. Յազիայի որդին Բենո.
27 Մերարիի որդիքը Յազիայէն՝ Բե-
նո, Սօհամ, Զաքուր ու Եբրի
28 էին։ Մոողիէն՝ Եղիազարը ծնաւ.
ժու անիկայ որդիներ չունէր։ — ժ Գլ. ԻԳ. 22.
29 Կիսէն՝ այսինքն Կիսին որդիներէն՝
30 Յերամէլ էր։ իՄուսիին որդիքը՝ — ի Գլ. ԻԳ. 23.
Մոողի, Եդեր ու Յերիմովթ էին։
Ղեւտացւոց որդիները իրենց տոհ-
մերուն համեմատ՝ ասոնք էին։
31 Եւ ասոնց համար ալ իրենց եղ-
բարցը Ահարոնի որդւոցը պէս՝
Դաւիթ թագաւորին, ու Սադով-
կին, ու Աքիմելէքին, և քահա-
նայից ու Ղեւտացւոց տոհմապետ-
ներուն առջեւ վիճակ ձգեցին,
թէ տոհմապետներուն և թէ ա-
նոնց պզտիկ եղբայրներուն հա-
մար։

## ԳԼ. ԻԵ

1 Երգեցողներուն թիւը ու պաշտօնը. 8 անոնց՝ վիճակով քսանուչորս դասակարգութիւններու բաժնուիլը։

1 Եւ Դաւիթ ու զօրքին իշխաննե- — Ն. Ք. 1015
րը՝ աԱսափին, Եմանին ու Ի- — ա Գլ. Զ. 33, 39, 44.
դիթունին որդիներէն՝ քնարնե-
րով, տաւիղներով ու ծնծղանե-
րով մարգարէութիւն ընողները ո-
րոշեցին այս պաշտօնիս համար. ու
իրենց պաշտօնին համեմատ՝ աս
ծառայութիւնը ընող մարդիկնե-
րուն համրանքը ասիկայ էր։
2 Ասափի որդիներէն՝ թագաւորին
քովը մարգարէութիւն ընող Ասա-
փին ձեռքին տակը՝ Ասափին որ-
դիքը՝ Զաքուր, Յովսէփ, Նաթա-
3 նիա և բԱսարէլա էին։ Իդիթու- — բ Հմր 14 Նշուած Յեսաաբէլա։
նէն՝ Իդիթունի որդիքը՝ Գոդո-
ղիա, Եզրի, Եսայի, գՍեմէի, Ա- — գ Տես Հմր 17։
սաբիա ու Մատաթիա՝ վեց էին.
ու ասոնք իրենց հօրը Իդիթունին
ձեռքին տակն էին, որ քնարով
Տէրոջը գոհութիւն ու օրհնութիւն
երգելով՝ մարգարէութիւն կ'ընէր։
4 Եմանէն՝ Եմանին որդիքը՝ Բոկ-
քիա, Մաթանիա, *Ոզիէլ, Սու- — * Կամ՝ Ազարիէլ. տես Հմր 18։
բայէլ, Յերիմովթ, Անանիա, Ա-
նանի, Եղիաթա, Գեդողաթի,
Ռոմամթիեզեր, Յեսբակասա,
Մեղեթի, Յօթիր ու Մազիովթ
5 էին։ Ասոնց ամէնը Եմանին որ-

Ն. Ք. ԳՔ. Իրր 1015

դիքն էին, որ թագաւորին տեսանողն էր՝ Աստուծոյ խօսքերուն մէջ եղջիւրը վերցնելու. ու Աստուած՝ Եմանին տասնուչորս տղայ
6 ու իրեք աղջիկ տուեր էր։ Ասոնք ամէնը Աստուծոյ տանը պաշտօնին համար՝ ծնծղաներով, տաւիղներով ու քնարներով՝ իրենց հօրը ձեռքին տակը՝ Տէրոջը տանը երգերը կ՚երգէին. իսկ Ասափ, Իդիթուն ու Եման՝ թագաւորին ձեռ-
7 քին տակն էին։ Եւ անոնց թիւը՝ Տէրոջը երգերը սորված իրենց եղբայրներուն հետ, այսինքն բոլոր հանճարեղներուն թիւը՝ երկու հարիւր ութսունըութն էր։
8 Եւ իրենց յաջորդական պաշտօնին համար՝ պզտիկը ու մեծը, Տ վարպետը ու աշակերտը՝ մէկտեղ Տ ԲՄն. իգ. 13.
9 վիճակ ձգեցին։ Եւ առաջին վիճակը՝ Ասափի որդւոյն Յովսէփին ելաւ. երկրորդը՝ Գոդողիային, որ ինքը ու իր եղբայրները ու որդի-
10 քը՝ տասնըերկու հոգի էին. Երրորդը՝ Զաքուրին, որ իր որդիներովը ու եղբայրներովը՝ տասնըեր-
11 կու հոգի էր. Չորրորդը՝ Եզրիին, որ իր որդիներովը ու եղբայրներովը
12 տասնըերկու հոգի էր. Հինգերորդը՝ Նաթանիային, որ իր որդիներովը ու եղբայրներովը տասնըերկու
13 հոգի էր. Վեցերորդը՝ Բոկքիային, որ իր որդիներովը ու եղբայրներո-
14 վը՝ տասնըերկու հոգի էր. Եօթներորդը՝ Յեսարէլային, որ իր որդիներովը ու եղբայրներովը՝ տա-
15 սնըերկու հոգի էր. Ութերորդը՝ Եսայիին, որ իր որդիներովը ու եղբայրներովը՝ տասնըերկու հոգի
16 էր. Իններորդը՝ Մաթանիային, որ իր որդիներովը ու եղբայրներո-
17 վը՝ տասնըերկու հոգի էր. Տասներորդը՝ Սեմէիին, որ իր որդիներովը ու եղբայրներովը՝ տասնըերկու
18 հոգի էր. Մետասաներորդը՝ Ազարիէլին, որ իր որդիներովը ու եղբայրներովը՝ տասնըերկու հոգի էր.
19 Երկոտասաներորդը՝ Ասաբիային, որ իր որդիներովը ու եղբայրներովը
20 տասնըերկու հոգի էր. Երեքտասաներորդը՝ Սուբայէլին, որ իր որդիներովը ու եղբայրներովը՝ տա-
21 սնըերկու հոգի էր. Չորեքտասաներորդը՝ Մատաթիային, որ իր որդիներովը ու եղբայրներովը՝ տա-
22 սնըերկու հոգի էր. Հնգետասաներորդը Յերիմովթին, որ իր որդիներովը ու եղբայրներովը՝ տասնը-
23 երկու հոգի էր. Վեշտասաներորդը՝ Անանիային, որ իր որդիներովը ու եղբայրներովը՝ տասնըերկու
24 հոգի էր. Եօթնուտասներորդը՝ Յեսբակասային, որ իր որդիներովը ու եղբայրներովը՝ տասնըերկու
25 հոգի էր. Ութուտասներորդը՝ Անանիին, որ իր որդիներովը ու եղբայրներովը՝ տասնըերկու հոգի
26 էր. Իննուտասներորդը՝ Մեղեթիին, որ իր որդիներովը ու եղբայրներովը՝ տասնըերկու հոգի էր.
27 Քսաներորդը՝ Եղիաթային, որ իր որդիներովը ու եղբայրներովը՝ տա-
28 սնըերկու հոգի էր. Քսանումէկերորդը՝ Յօթիրին, որ իր որդիներովը ու եղբայրներովը՝ տասնըերկու
29 հոգի էր. Քսանուերկուերորդը՝ Գեդողաթիին, որ իր որդիներովը ու եղբայրներովը՝ տասնըերկու
30 հոգի էր. Քսանուիրեքերորդը՝ Մազիովթին, որ իր որդիներովը ու եղբայրներովը՝ տասնըերկու
31 հոգի էր. Քսանուչորսերորդը՝ Ռոմամթիեզերին, որ իր որդիներովը ու եղբայրներովը՝ տասնըերկու հոգի էր։

## ԳԼ. ԻԶ.

1 Դռնապաններուն դասակարգութիւնները։ 13 Դռներուն պահպանութիւնը վիճակով անոնց կը յանձնուի։ 20 Տէրոջը գանձերուն վերակացու ընտրուած Ղեւտացիները։ 29 Ոստիկաններ ու դատաւորներ։

1 Դռնապանաց դասակարգութիւնները. Կորխեաններէն՝ Ասափի որդիներէն՝ Կովրէին որդին ա Մա- ա Հմր 14 Մեսեղեմիա.
2 սեղամիան էր։ Ու Մասեղամիայի որդիքը՝ անդրանիկը Զաքարիա, երկրորդը՝ Յեդիէլ, երրորդը՝ Զաբադիա, չորրորդը՝ Յաթնիէլ,
3 Հինգերորդը՝ Եղամ, վեցերորդը՝ Յօհանան, եօթներորդը՝ Եղիովէ-
4 նայի էին։ Եւ Աբդեդոմի որդիքը՝ անդրանիկը Սեմայիա, երկրորդը՝ Յովզաբադ, երրորդը՝ Յովաք, չորրորդը՝ Սաքար, հինգե-
5 րորդը՝ Նաթանայէլ, Վեցերորդը՝ Ամիէլ, եօթներորդը՝ Իսաքար, ութերորդը՝ Փեղաթի. քանզի Աստուած *զանիկայ օրհներ էր։ * Եբ՝ Աբդեդոմը. տես Գլ. Ժգ. 14.
6 Ու անոր որդւոյն Սեմայիային որդիներ ծնան, որոնք իրենց հօրը տանը իշխաններ եղան. քանզի ա-
7 նոնք զօրաւոր կտրիճներ էին։ Սեմայիային որդիքը՝ Ոթնի, Ռափայէլ, Ովբէդ, Եզաբադ, †Աքիով, Բենհայիէլ, Եղիուս ու Սամա- † Կամ՝ անոր եղբայրները զօրաւոր մարդիկ.
8 քիա էին։ Ասոնք ամէնը՝ Աբդեդոմի որդիներէն էին, ― իրենք ու իրենց որդիքը և իրենց եղբայրները՝ ծառայութեան համար զօրաւոր ու կտրիճ մարդիկներ՝ Աբդեդոմէն
9 վաթսունուերկու էին։ Եւ Մասեղամիան՝ տասնըութը զօրաւոր
10 որդիներ ու եղբայրներ ունէր։ Ու Մերարիի որդւոցմէ Բ Ոսան որդիներ ունէր. գլխաւորը Սամարի էր. Բ Գլ. Ժզ. 38.

Ն. Ք. ԳՔ. Իբր 1015

քանզի թէպէտեւ անիկայ անդրա-
նիկ չէր, բայց անոր հայրը զանի-
11 կայ գլուխ ըրաւ. Երկրորդը՝ Քեղ-
կիա, երրորդը՝ Տաբաղիա. չոր-
րորդը՝ Զաքարիա էր. Ոսա-
յին բոլոր որդիները ու եղբայր-
12 ները՝ տասուերեք էին: Դռնա-
պաններուն դասակարգութիւննե-
րը ասոնց տրուեցան էին՝ գլխաւոր
մարդիկներու, որ իրենց եղբայրնե-
րուն հետ պահպանութիւն ընելով՝
13 Տէրոջը տանը մէջ ծառայեն: Եւ
պզտիկը ու մեծը հաւասարապէս
վիճակ ձգեցին իրենց ազգատոհմ-
ներուն համեմատ՝ ամէն մէկ դրան
14 համար: Եւ արեւելեան կողմին վի-
ճակը՝ Սելեմիային ելաւ. ետքը
անոր որդւոյն՝ խելացի ու խորհըր-
դական Զաքարիային համար վիճակ
ձգեցին, ու անոր վիճակը հիւսի-
15 սային կողմը ելաւ: Աբդեդոմին՝
հարաւային կողմը,, ու անոր որ-
16 դւոցը՝ Բեթասուփիմը: Սուփի-
մին և Ոսային՝ արեւմտեան կողմը
ելաւ՝ Սալեքեթին դրանը քովը՝
վեր ելլող ճամբուն վրայ. ու մէկ
պահպանութիւնը մէկալ պահպա-
17 նութեանը դիմացն էր: Արեւելեան
կողմը՝ վեց Ղեւտացի, հիւսիսային
կողմը՝ օրը չորս, հարաւային կող-
մը՝ օրը չորս, ու Ասուփիմի կողմը՝
18 երկերկու էին: Փարպարին կող-
մը դէպ 'ի արեւմուտք սանդուխին
ճամբան՝ չորս, ու Փարպարը՝ եր-
19 կու դռնապան կար: Կորխեանց որ-
դիներէն ու Մերարիի որդիներէն
եղող դռնապաններուն դասակար-
գութիւնները ասոնք էին:
20 Ու Ղեւտացիներէն Աստուծոյ
տանը գանձերուն ու նուիրական
21 գանձերուն վրայ Աքիան էր: Գեր-
սոնացի Ղադանին ազգատոհմնե-
րուն իշխաններէն՝ Գերսոնացի
Ղադանին որդիներէն՝ Յեքիէլն
22 էր: Յեքիէլին որդիքը՝ Զեթամ,
ու անոր եղբայրը Յովէլ՝ Տէրոջը
23 տանը գանձերուն վրայ էին: Ո-
Ամրամեաններէն, Իսահառեաննե-
րէն, Քեբրոնեաններէն ու Ոզիե-
24 լեաններէն ասոնք էին. Մովսէսի որ-
դւոյն Գերսամին որդին Սուբայէ-
լը՝ գանձերուն վերակացուն էր:
25 Եւ անոր եղբայրները Եղիազարին
որդիքը. անոր որդին Հռաբիա,
անոր որդին Եսայի, անոր որդին
Յովրամ, անոր որդին Զեքրի, ու
26 անոր որդին Սաղոմօթ էր: Աս
Սաղոմօթը ու անոր եղբայրները՝
Դաւիթ թագաւորին, ու տոհմից
իշխաններուն, ու հազարապետնե-
րուն, և հարիւրապետներուն, ու
զօրաց իշխաններուն նուիրած ա-
մէն սուրբ գանձերուն վրայ էին,

Գ Հմր 1 Մն. ... Մասեդոմիա:
Դ Տես Գ Թագ. Ժ. 5: Բ Մն. Թ. 4:
Ե Գլ. Իր. 12: Մաղ. Գ. 10:
Զ Գլ. Զ. 17: Է Գլ. Իգ. 8: ԻԹ. 8:
Ը Գլ. Իգ. 16:
Թ Գլ. Իգ. 18:

27 Որոնք պատերազմներէն ու աւարէն՝
Տէրոջը *տանը շինութեանը՝ հա-
28 մար նուիրեր էին. Նաև Սամուէլ
տեսանողին, ու Կիսեան Սաւու-
ղին, ու Ներեան Աբեններին, և
Շարուհեան Յովաբին նուիրած բո-
լոր նուէրները՝ Սաղոմօթին ու ա-
նոր եղբայրներուն ձեռքին տակն
էին:
29 Իսահառեաններէն՝ Քոնոնիա ու
անոր որդիքը՝ արտաքին գործքե-
րու համար՝ Իսրայէլի վրայ ոստի-
կաններ ու դատաւորներ էին:
30 Քեբրոնեաններէն՝ Ասաբիա ու ա-
նոր եղբայրները՝ հազար եօթը
հարիւր զօրաւոր մարդիկներ՝ Յոր-
դանանու ասդիի կողմը դէպ 'ի
արեւմուտք՝ Տէրոջը ամէն գործքին
համար ու թագաւորին ծառայու-
թեանը համար՝ Իսրայէլի վրայ ոս-
31 տիկաններ էին: Քեբրոնեաններէն՝
Քեբրոնեաններուն ազգատոհմին իշ-
խանը Յերիա էր. Դաւիթին
թագաւորութեանը քառասներորդ
տարին՝ անոնք համրուեցան, ու
Գաղաադու Յազերի մէջ՝ անոնց-
մէ զօրաւոր կտրիճներ գտնուեցան:
32 Եւ անոր եղբայրները՝ երկու հա-
զար եօթը հարիւր զօրաւոր մար-
դիկներ ու տոհմերու իշխաններ
էին. և Դաւիթ թագաւորը զա-
նոնք՝ Ռուբենեանց, Գադեանց, ու
Մանասեանց կէս ցեղին վրայ դրաւ,
Աստուծոյ և թագաւորին ամէն
գործքին համար:

Ն. Ք. ԳՔ. Իբր 1015
* Եբր. տանը հաստատելու
Ժ Ա Թագ. Թ. 9:
Ի Գլ. Իգ. 4:
Լ Գլ. Իգ. 19:
Խ Տես Յես. Իա. 39:
Ծ Բ Մն. ԺԹ. 11:

## ԳԼ. ԻԷ

1 Տասուերկու գործակալները տասուերկու ամիսներուն համար: 16 Տասուերկու ցեղերուն տասուերկու իշխանները: 23 Ժողովուրդը համրելը կը խափանուի: 25 Դաւիթին մասնաւոր գործակալները:

1 Ու Իսրայէլի որդւոցմէ իրենց համ-
րանքովը՝ ազգատոհմի նահա-
պետներէն, ու հազարապետներէն,
և հարիւրապետներէն, ու անոնց
ոստիկաններէն՝ դասակարգու-
թեանց ամէն գործքին մէջը՝ թա-
գաւորին ծառայութիւն ընողնե-
րուն, և տարւոյն ամէն ամիսներուն
մէջը՝ ամէն ամիս մտնողներուն ու
ելլողներուն ամէն մէկ դասը՝ քսան-
2 ուչորս հազար մարդ էր: Առա-
ջին ամսուն համար առաջին դասին
վրայ Զաբդիելի որդին Յեսբաամն
էր. ու անոր դասը քսանուչորս
3 հազար մարդ էր: Առաջին ամսուն
ամէն զօրավարներուն իշխանը՝ Փա-
4 րեսին որդիներէն էր: Ու երկրորդ
ամսուն դասին վրայ՝ Աքուքացի
Դովդան էր. ու Մակեղօթ անոր
դասին իշխանն էր. ասոր դասն ալ
5 քսանուչորս հազար մարդ էր: Եր-
րորդ ամսուն համար երրորդ զօրա-

Ա Տես Բ Թագ. Իգ. 8: Գլ. ԺԱ. 11:
Բ Բ Թագ. Իգ. 9:

Ն․ Ք․ Ծ․ Իրր 1015

* Կամ՝ նախարար․ Գ Թագ․ Դ․ 5։

Գ Բ Թագ․ Իգ․ 20․ 22․ 23․ Գլ․ ԺԱ․ 22, Ա։

Դ Բ Թագ․ Իգ․ 24․ Գլ․ ԺԱ․ 26։

Ե Գլ․ ԺԱ․ 28։

Զ Գլ․ ԺԱ․ 27։

Է Բ Թագ․ Իա․ 18․ Գլ․ ԺԱ․ 29։

Ը Գլ․ ԺԱ․ 28։

Թ Բ Թագ․ Իգ․ 28․ Գլ․ ԺԱ․ 30։

Ժ Գլ․ ԺԱ․ 31։

Ի Գլ․ ԺԱ․ 30։

Լ Գլ․ Իզ․ 30։

† Կամ՝ Եղիաբ․ Ա Թագ․ ԺԶ․ 6։

պետը՝ Յովիադայի որդին Բանեան
մեծ *քահանան էր․ ու անոր դասը
6 քսանուչորս հազար հոգի էր։ Աս
Բանեան՝ երեսունէն զօրաւոր էր․
ու երեսունին վրայ էր․ և անոր որ-
դին Ամիզաբադը անոր դասին մէջն
7 էր։ Չորրորդ ամսուն համար չոր-
րորդ զօրագլուխը՝ Յովաբին եղբայրը
Գ Ասայէլը, ու անկէ ետքը անոր
որդին Զաբադիան էր․ և անոր դա-
սը քսանուչորս հազար հոգի էր։
8 Հինգերորդ ամսուն համար հինգե-
րորդ զօրապետը՝ Յեզրացի Սամա-
ովթն էր․ ու անոր դասը քսանու-
9 չորս հազար հոգի էր։ Վեցերորդ
ամսուն համար վեցերորդ զօրագլուխը՝
Թեկուացի Եկկեսին որդին Ե Ի-
րան էր․ ու անոր դասը քսան-
10 ուչորս հազար հոգի էր։ Եօթ-
ներորդ ամսուն համար եօթներորդ
զօրագլուխը՝ Եփրեմի որդւոցմէ Փե-
լոնացի Զ Քեղղէսն էր․ ու անոր
դասը քսանուչորս հազար հոգի էր։
11 Ութերորդ ամսուն համար՝ ութե-
րորդ զօրագլուխը՝ Զարայեանց Է Ով-
սացի Սովբաքն էր․ ու անոր դասը
12 քսանուչորս հազար հոգի էր։ Ին-
ներորդ ամսուն համար իններորդ
զօրագլուխը՝ Բենիամինեաններէն Ը Ա-
նաթովթացի Աբիեզերն էր․ և ա-
նոր դասը քսանուչորս հազար հոգի
13 էր։ Տասներորդ ամսուն համար
տասներորդ զօրագլուխը՝ Զարայեանց
Թ Նետոփաթացի Մաարան էր․ ու
անոր դասը քսանուչորս հազար
14 հոգի էր։ Մետասաներորդ ամսուն
համար մետասաներորդ զօրագլու-
խը՝ Եփրեմի որդւոցմէ՝ Ժ Փարաթո-
նացի Բանեան էր․ և անոր դասը
15 քսանուչորս հազար հոգի էր։ Եր-
կոտասաներորդ ամսուն համար եր-
կոտասաներորդ զօրագլուխը՝ Գոթո-
նիէլի սերունդէն՝ Ի Նետոփաթացի
Ալադն էր․ ու անոր դասը քսան-
ուչորս հազար հոգի էր։
16 Եւ Իսրայէլի ցեղերուն վրայ ա-
սոնք էին․ Ռուբէնի ցեղին իշխան՝
Զեքրիի որդին Եղիազար, Շմա-
ւոնի ցեղին՝ Մաաքայի որդին Սա-
17 փատիա, Ղևիի ցեղին՝ Կամուէլի
որդին Լ Ասաբիա, Ահարոնի որ-
18 դւոցը՝ Սադովկ, Յուդայի ցեղին՝
Դաւիթին եղբայրներէն՝ † Եղիուս,
Իսաքարի ցեղին՝ Միքայէլի որդին
19 Ամրի, Զաբուղոնի ցեղին՝ Աբդիա-
յի որդին Իսմայիա, Նեփթաղիմի
ցեղին՝ Եզրիէլի որդին Յերիմովթ,
20 Եփրեմի որդւոցը՝ Ազազիայի որդին
Ովսէէ, Մանասէի կէս ցեղին՝ Փա-
21 դայիայի որդին Յովէլ, Գաղաադ
եղող Մանասէի կէս ցեղին՝ Զաքա-
րիայի որդին Յեդդով, Բենիամինի
ցեղին՝ Աբենների որդին Յասիէլ,

Ն․ Ք․ Ծ․ Իրր 1015

Կ Ծն․ ԺԵ․ 5։

Իրր 1017

Մ Բ Թագ․ Իդ 15․ Գլ․ ԻԱ․ 7։

Իրր 1015

‡ Եբր․ մառանիներուն․

Յ Բ Թագ․ ԺԵ․ 12։

Ն Բ Թագ․ ԺԶ․ 37․ ԺԷ․ 16։

Շ Գ Թագ․ Ա․ 7։

Ո Գլ․ ԺԱ․ 6։

Չ Գլ․ ԻԵ․ 16։

22 Դանի ցեղին՝ Յերոամի որդին՝ Ա-
զարիէլ։ Իսրայէլի ցեղերուն իշ-
խանները ասոնք էին։
23 Եւ Դաւիթ քսան տարեկանէն
վար եղողները չհամրեց․ վասն զի
Կ Տէրը ըսեր էր որ Իսրայէլը երկին-
քին աստղերուն չափ պիտի շատցը-
24 նէ։ Շարուհեայի որդին Յովաբը
սկսաւ համրել, բայց չլմընցուց․
ու անոր համար Մ Իսրայէլի վրայ
բարկութիւն եկաւ․ և այն համ-
րանքը Դաւիթ թագաւորին յի-
շատակաց գրքին մէջ չմտաւ։
25 Ու թագաւորին գանձերուն վրայ՝
Ադիելի որդին Ազմովթն էր․ և
դաշտը եղող քաղաքները և գեղերը
ու աշտարակները եղող շտեմա-
րաններուն վրայ՝ Ոզիայի որդին
26 Յովնաթանն էր․ Եւ արտը բանող
երկրագործներուն վրայ՝ Քեղուբի
27 որդին Եզրին էր․ Ու այգիներուն
վրայ՝ Արիմաթացի Սեմէին էր․ ու
այգիներուն ‡ բերքերուն, այսինքն գինիի
շտեմարաններուն վրայ՝ Սեփամացի
28 Զաբդին էր․ Եւ դաշտը եղող
ձիթենիներուն ու մոլաթզենինե-
րուն վրայ՝ Գադերացի Բաաղա-
նանն էր․ ու եղի շտեմարաններուն
29 վրայ՝ Յովասն էր․ Ու Սարոնի մէջ
եղող արօտական արջառներուն
վրայ՝ Սարոնացի Սետրան էր․ ու
հովիտներու մէջ եղող արջառնե-
րուն վրայ՝ Ադղիի որդին Սափատն
30 էր․ Եւ ուղտերուն վրայ՝ Իսմայէ-
լացի Ոբիլն էր․ ու էշերուն վրայ՝
31 Մերոնոթացի Յադայիան էր․ Եւ
հօտերուն վրայ՝ Հագարացի Յա-
զիզն էր։ Ասոնք ամէնը՝ Դաւիթ
թագաւորին ստացուածոցը վերա-
կացուներն էին։
32 Ու Դաւիթին հօրեղբայրը Յով-
նաթան խորհրդական էր․ անիկայ
խելացի ու գիտուն մարդ մըն էր․
և Հաքեմոնիի որդին Յեքիէլը՝ թա-
33 գաւորին որդւոցը հետ էր․ Ու Յ Ա-
քիտոփէլ՝ թագաւորին խորհրդա-
կանը, և Արաքացի Ն Քուսին՝ թա-
34 գաւորին բարեկամն էր․ Ու Աքի-
տոփէլէն ետքը՝ Բանեայի որդին
Յովիադան, ու Շ Աբիաթարն էին․
ու թագաւորին զօրագլուխը՝ Ո Յո-
վաբն էր։

## ԳԼ․ ԻԸ

1 Դաւիթ հանդիսաւոր ժողովքի մը մէջ ծա-
նուցանելով իր վրայով Աստուծոյ ունեցած
հաճութիւնը, ու իր որդւոյն Սողոմոնին հա-
մար ըրած խոստումները, զանոնք կը յորդորէ
որ Աստուծմէ վախնան․ 9, 20 կը յորդորէ
նաև իր որդին Սողոմոնը՝ որ տաճարը շինէ․
11 ու անոր ի՛նչ ձևով ըլլալուն օրինակը կու-
տայ։

1 Եւ Դաւիթ՝ Իսրայէլին բոլոր իշ-
խանները, Չ ցեղերուն իշխաննե-
րը, ու թագաւորին ծառայութիւն

ընող Բ դասերուն իշխանները, և
հազարապետները, ու հարիւրա-
պետները, և թագաւորին ու անոր
որդւոցը բոլոր ստացուածոց ու ըն-
չից Գ վերակացուները, ներքինինե-
րը, Դ զօրաւորները, ու զօրքին բո-
լոր կտրիճները՝ Երուսաղեմի մէջ
2 ժողվեց ։ Եւ Դաւիթ թագաւորը
ոտքի վրայ կայնեցաւ, ու ըսաւ.
Ո՛վ իմ եղբայրներս ու իմ ժողո-
վուրդս՝ ինծի մտիկ ըրէք. Ե իմ
սրտիս մէջը ունեցայ՝ որ Տէրոջը
ուխտի տապանակին, ու մեր Աս-
տուծոյն ոտքը Զ պատուանդանի
համար՝ մէկ հանգստեան տուն մը շի-
նեմ. ու շինելու պատրաստութիւն
3 տեսայ. Բայց Աստուած ինծի ը-
սաւ. Է Դուն իմ անուանս տուն
պիտի չշինես. քանզի դուն պատե-
րազմի մարդ ես, ու *շատ արիւն"
4 թափեցիր ։ Եւ Իսրայէլին Տէր
Աստուածը իմ հօրս բոլոր տունէն
Ը զիս ընտրեց, որ յաւիտեան Իս-
րայէլին վրայ թագաւոր ըլլամ.
քանզի առաջնորդը՝ Թ Յուդայէն,
ու Յուդայի տունէն՝ Ժ իմ հօրս
տունը ընտրեց. ու ԺԱ իմ հօրս որ-
դւոցը մէջէն ինծի հաւնեցաւ, որ
զիս բոլոր Իսրայէլի վրայ թագաւոր
5 ընէ ։ ԺԲ Եւ իմ բոլոր որդիներէս՝
(որովհետև Տէրը ինծի շատ որդի-
ներ տուաւ,) ԺԳ իմ որդիս Սողոմոնը
ընտրեց, որ Իսրայէլի վրայ՝ Տէրոջը
թագաւորութեան աթոռը նստի.
6 Ու ինծի ըսաւ. ԺԴ Քու որդիդ Սո-
ղոմոն՝ ինքը պիտի շինէ իմ տունս
ու իմ սրահներս. քանզի զանիկայ
ինծի որդի ընտրեցի, ու ես անոր
7 հայր պիտի ըլլամ. Եւ անոր թա-
գաւորութիւնը յաւիտեան պիտի
հաստատեմ, ԺԵ թէ որ աս օրուան
պէս՝ իմ հրամաններս ու դատաս-
տաններս 'ի գործ դնելու մէջ յա-
8 րատևէ ։ Ու հիմա բոլոր Իսրայէլին՝
Տէրոջը ժողովքին առջևը՝ ու մեր
Աստուծոյն լսելովը ԺԶ կ'ըսեմ. Ձեր
Տէր Աստուծոյն բոլոր պատուի-
րանքները պահեցէ՛ք ու զգուշու-
թեամբ սորվեցէ՛ք, որ աս բարի
երկիրը ժառանգէք, ու ձեզմէ ետքը
ձեր որդւոցը ժառանգութիւն
թողուք յաւիտեան ։
9 Եւ դուն՝ որդեակ իմ Սողոմոն,
ԺԷ քու հօրդ Աստուածը ճանչցիր,
ու անոր՝ ԺԸ կատարեալ սրտով ու
յօժար կամօք ծառայութիւն ըրէ.
քանզի ԺԹ Տէրը ամէն սիրտերը կը
քննէ, ու ամէն մտաց խորհուրդնե-
րը կը ճանչնայ. Ի թէ որ զանիկայ
փնտռես, † պիտի գտնես", և թէ որ
զանիկայ թողուս, անիկայ քեզ յա-
10 ւիտեան պիտի մերժէ ։ Հիմա նայէ
որ ԻԱ Տէրը քեզ ընտրեց՝ էր սրբա-
րանին համար տուն մը շինելու.
զօրացիր, ու աս գործը կատարէ ։
11 Եւ Դաւիթ իր որդւոյն Սողոմո-
նին՝ ԻԲ սրահին, ու անոր սենեակնե-
րուն, և անոր գանձարաններուն,
ու անոր վերնատուններուն, և ա-
նոր ներքին շտեմարաններուն, ու
քաւութիւնին տանը գաղափարը
12 տուաւ. Եւ ‡ Հոգիին ազդեցու-
թեամբը իրեն յայտնուած" բոլոր
բաներուն՝ Տէրոջը տանը գաւիթ-
ներուն, ու բոլորտիքը եղող ամէն
սենեակներուն, և ԻԳ Աստուծոյ տա-
նը շտեմարաններուն, ու նուի-
րուած բաներուն գանձարաններուն
13 գաղափարը տուաւ. Նաև քահա-
նայից ու Ղևտացւոց դասակար-
գութիւններուն համար, ու Տէրո-
ջը տանը պաշտօնին ամէն գործքին
համար, և Տէրոջը տանը ծառա-
յութեանը ամէն անօթներուն հա-
14 մար գաղափար տուաւ. Ու ամէն
պաշտօններուն ամէն ոսկի անօթ-
ներուն կշիռքը, ու ամէն արծա-
թէ անօթներուն, ու ամէն պաշ-
15 տօնի անօթներուն ալ կշիռքը, Եւ
ամէն ոսկիէ աշտանակներուն, ու
անոնց ամէն ոսկիէ ճրագներուն
կշիռքը, և ամէն արծաթէ աշտա-
նակին, ու անոր ճրագներուն, ա-
մէն մէկ աշտանակին գործածու-
թեանը համեմատ՝ կշիռքը տուաւ.
16 Եւ առաջաւորութեան սեղաննե-
րուն ամէն մէկ սեղանին համար՝
ոսկիին կշիռքը, ու արծաթէ սե-
ղաններուն համար՝ արծաթին կշ-
17 ռքը, Եւ մաքուր ոսկիէ մսահան-
ներուն, ու կոնքերուն, և բաժակ-
ներուն, ու ոսկիէ տաշտերուն հա-
մար՝ ամէն մէկ տաշտին կշիռքը, և
արծաթէ տաշտերուն համար՝ ամէն
18 մէկ տաշտին կշիռքը տուաւ. Ու
խունկի սեղանին համար կշիռքով
մաքուր ոսկի, և ԻԴ քրէներ բևեռը տա-
րածող՝ ու Տէրոջը ուխտին տա-
պանակը ծածկող ԻԵ քերովբէից
կառքին գաղափարին համար՝ ոսկի
19 տուաւ ։ Աս բոլոր բաները՝ աս գա-
ղափարին բոլոր գործքերը՝ ԻԶ Տէրը
իր ձեռքին գրովը ինծի յայտնեց՝
ըսաւ ։
20 Եւ Դաւիթ իր որդւոյն Սողոմո-
նին ըսաւ. ԻԷ Զօրացիր, ու քաջա-
սիրտ եղիր, ու աս գործը կատարէ.
մի՛ վախնար, ու մի՛ զարհուրիր.
քանզի Տէր Աստուածը՝ իմ Աս-
տուածս քեզի հետ է. ԻԸ անիկայ
քեզ պիտի չթողու, ու քեզ երե-
սէ պիտի չձգէ, մինչև որ Տէրոջը
տանը ծառայութեանը բոլոր գործ-
21 քերը լմնցընես ։ Եւ ահա ԻԹ քահա-
նայից ու Ղևտացւոց դասերը՝ Աս-
տուծոյ տանը բոլոր ծառայու-

Բ Գլ. իէ. 1, 2 ։
Գ Գլ. իէ. 25 ։
Դ Գլ. ժա. 10 ։
Ե Բ Թագ. է. 2 ։ Սաղ. ճլբ. 3, 4, 5 ։
Զ Սաղ. ղթ. 5 ։ ճլբ. 7 ։
Է Բ Թագ. է. 5 ։ 13 ։ Գ Թագ. ե. 3 ։ Գլ. ժէ. 4 ։ իբ. 8 ։
* Եբր. արիւններ
Ը Ա Թագ. ժզ. 7—13 ։
Թ Ծնն. խթ. 8 ։ Գլ. ե. 2 ։ Սաղ. կ. 7 ։ հը. 68 ։
Ժ Ա Թագ. ժզ. 1 ։
ԺԱ Ա Թագ. ժզ. 12, 13 ։
ԺԲ Գլ. գ. 1 ։ Ա ։ իգ. 1 ։
ԺԳ Գլ. իբ. 9 ։
ԺԴ Բ Թագ. է. 13, 14 ։ Գլ. իբ. 9, 10 ։ Բ Մն. ա. 9 ։
ԺԵ Գլ. իբ. 13 ։
ԺԶ Երեմ. թ. 24 ։ Ովս. դ. 1 ։ Յովհ. ժէ. 3 ։
ԺԷ Գ Թագ. ի. 3 ։ Սաղ. ճա. 2 ։
ԺԸ Ա Թագ. ժզ. 7 ։ Գ Թագ. ը. 39 ։ Գլ. իթ. 17 ։ Սաղ. է. 9 ։ ճլթ. 2 ։ Առակ. ժէ. 3 ։ Երեմ. ժա. 20 ։ ժէ. 10 ։ ի. 12 ։ Յայտ. բ. 23 ։
ԺԹ Բ Մն. ժե. 2 ։
† Եբր. պիտի գտնուի քեզի ։
Ի Հռմ. 6 ։

Ն. Ք. ԺԲ. Ե. 1015
ԻԱ Տես Ել. իե. 40 ։ Հռմ. 19 ։
‡ Կամ՝ իր մտքին մէջը սնեցած
ԻԲ Գլ. իզ. 20 ։
ԻԳ Ել. իե. 18—22 ։ Ա Թագ. դ. 4 ։ Գ Թագ. զ. 23. Ա ։
ԻԴ Տես Ել. իե. 40 ։ Հռմ. 11. 12 ։
ԻԵ Բ Օր. լա. 7, 8 ։ Յեսու. ա. 6, 7, 9 ։ Գլ. իբ. 13 ։
ԻԶ Յեսու. ա. 5 ։
ԻԷ Գլ. իդ. իե. իզ. ։

Ն. Ք. ՉՔ. իրր 1015

ա Ել. Լե. 25, 26։ Լզ. 1, 2։

թեանը համար են. ու ամէն ծա-
ռայութեան համար՝ ամէն գործքի
մէջ՝ ա ամէն յօժարակամ իմաս-
տուններըը քեզի հետ են. և իշխան-
ները ու բոլոր ժողովուրդը քու ա-
մէն հրամանիդ կը նային։

ԳԼ. ԻԹ

1 Դաւիթ՝ իր օրինակովը ու յորդորանքովը 6 պատճառ կ'ըլլայ որ իշխանները ու ժողովուրդը կամաւոր ընծաներ կը մատուցանեն։ 10 Դաւիթին շնորհակալութիւնը ու աղօթքը։ 20 Ժողովուրդը զԱստուած օրհնելով ու զոհ մատուցանելով, Սողոմոնը թագաւոր կը նըստեցընեն։ 26 Դաւիթին թագաւորութեանը օրերը ու մահը։

1015

ա Գ Թագ. Գ. 7։ Գլ. ԻԲ. 5։ Առակ. Դ. 3։

1 Եւ Դաւիթ թագաւորը բոլոր ժո-
ղովքին ըսաւ. Իմ որդիս Սո-
ղոմոնը՝ որ Աստուած միայն անի-
կայ ընտրեց, ա փափուկ տղայ մըն
է, ու գործքը մեծ է. քանզի այս
պալատը մարդու համար չէ, հապա
2 Տէր Աստուծոյ համար է։ Ուստի
ես իմ բոլոր կարողութեամբս՝ իմ
Աստուծոյս տանը համար՝ ոսկիէ
ըլլալու բաներուն համար՝ ոսկի, ու
արծաթեղէններուն համար՝ ար-
ծաթ, և պղնձեղէններուն համար՝
պղինձ, ու երկաթեղէններուն հա-
մար՝ երկաթ, և փայտեղէններուն
համար՝ փայտ, ու բ եղնդնաքարեր,
և զամելու քարեր, ու զարդի հա-
մար՝ գոյնզգոյն քարեր, և ամէն
տեսակ պատուական քարեր, ու
մարմարիոն քարեր առատօրէն
3 պատրաստեցի։ Ու նաև իմ Աս-
տուծոյս տանը վրայ մեծ սէր ունե-
նալուս համար, սրբարանի տանը
համար ամէն պատրաստած բանե-
րէս 'ի զատ, իմ յատուկ գանձիս
մէջը եղած ոսկին ու արծաթն ալ
իմ Աստուծոյս տանը համար տուի,
4 գ Ոփիրի ոսկիէն՝ իրեք հազար տա-
ղանդ ոսկի, ու եօթը հազար տա-
ղանդ մաքուր արծաթ՝ որ անոնց-
մով տուներուն որմունքը պատեն.
5 Ոսկիէ ըլլալու բաներուն համար ոս-
կի, ու արծաթեղէններուն համար
արծաթ, ու արուեստաւորներուն
ձեռքովը ըլլալու ամէն տեսակ
գործքին համար հօրինուած եղածը
տուի. և այսօր յեղէ իր կամքովը
Տէրոջը *ընծայ տուող" ո՞վ կայ։
6 Ան ատենը դ տոհմից իշխանները,
ու Իսրայէլի ցեղերուն իշխանները,
և հազարապետները, ու հարիւրա-
պետները, և ե թագաւորին գործ-
քին վերակացուները՝ յօժար կա-
7 մօք ընծայ բերին, Ու Աստուծոյ
տանը գործքին համար՝ հինգ հա-
զար տաղանդ և տասը հազար դը-
րամ ոսկի, ու տասը հազար տա-
ղանդ արծաթ, և տասնըութը հա-
զար տաղանդ պղինձ, ու հարիւր

բ Տնն. Ես. ԾԴ. 11, 12։ Յայտ. ԻԱ. 18, ևն։

գ Գ Թագ. Թ. 28։

* Եբր. իր ձեռքը լեցնող

դ Գլ. ԻԷ. 1։

ե Գլ. ԻԷ. 25, ևն։

հազար տաղանդ երկաթ տուին։
8 Եւ որոնց քովը որ քարեր գտնուե-
ցաւ, Գերսոնացի զ Յեքիէլին ձեռ-
քովը Տէրոջը տանը գանձին ընծա-
9 յեցին։ Ու ժողովուրդը՝ անոնց
կամաւոր ընծաներ մատուցանելուն
համար ուրախացան. քանզի է կա-
մաւոր ընծան բոլոր սրտով մա-
տուցին Տէրոջը. ու Դաւիթ թա-
գաւորն ալ խիստ շատ ուրախա-
ցաւ։
10 Եւ Դաւիթ բոլոր ժողովքին աչ-
քին առջևը Տէրը օրհնեց. ու Դա-
ւիթ ըսաւ. Ո՛վ Տէր՝ մեր հօրը
Իսրայէլին Աստուածը. յաւիտենից
մինչև յաւիտեանս օրհնեալ ես.
11 Ո՛վ Տէր՝ ը մեծութիւնը, զօրու-
թիւնը, փառքը, յաւիտենակա-
նութիւնը ու վայելչութիւնը քու-
կդ է. քանզի բոլոր երկինքի ու
երկրի վրայ եղածը քուկդ է. ո՛վ
Տէր՝ թագաւորութիւնը քուկդ
է, ու դուն իբրև գլուխ ամենէն
12 բարձրացած ես։ թ Եւ հարստու-
թիւնը ու փառքը քեզմէ է, ու
ամենուն իշխանը դուն ես. և զօ-
րութիւնը ու կարողութիւնը քու
ձեռքիդ մէջն է. և ամէնը մեծցը-
նելը ու ուժովցընելը՝ քու ձեռքդ
13 է։ Եւ հիմա ով մեր Աստուածը՝
քեզի գոհութիւն կու տանք, ու
քու փառաւորեալ անունդ կ'օրհ-
14 նենք։ Բայց ես ո՞վ եմ, ու իմ
ժողովուրդս ո՞վ է, որ այսպէս կա-
մաւոր ընծայ տալու կարող ըլլանք.
քանզի ամէն բան քեզմէ է, ու
15 †քուկիններէդ քեզի տուինք։ Վասն
զի ժ մենք քու առջևդ՝ մեր բոլոր
հայրերուն պէս՝ օտարականներ ու
պանդուխտներ ենք. երկրի վրայ
ժա մեր օրերը շուքի պէս է, ու ‡ մնա-
16 յուն բան" մը չկայ։ Ո՛վ Տէր Աս-
տուած մեր, քեզի՝ քու սուրբ ա-
նուանդ շինուելու տանը համար աս
մեր պատրաստած բաներուն բոլոր
առատութիւնը քու ձեռքէդ է,
17 ու ամէնն ալ քուկդ է. Եւ գիտեմ՝
ո՛վ Աստուած իմ, որ դուն ժբ սիր-
տերը կը փորձես, և ժգ ուղղութիւնը
կը սիրես. ասոնց ամէնը ես ուղիղ
սրտով ու յօժար կամքով ընծայ ը-
րի. ու հիմա հոս գտնուած ժողո-
վուրդդ ուրախութեամբ տեսայ,
որ քեզի կամաւոր ընծայ կը մա-
18 տուցանեն։ Ո՛վ մեր հայրերուն՝
Աբրահամին, Իսահակին ու Իսրա-
յէլին Տէր Աստուածը, ասիկայ
յաւիտեան քու ժողովուրդիդ սըր-
տին խորհուրդներուն մէջը պահէ,
ու ժդ անոնց սիրտը քեզի՝ ‖ուղղէ։
19 Եւ ժե իմ որդւոյս Սողոմոնին կատա-
րեալ սիրտ տուր, որ քու պատուի-
րանքներդ, վկայութիւններդ ու

Ն. Ք. ՉՔ. 1015

զ Գլ. ԻԶ. 21։

է Բ Կոր. Թ. 7։

ը Մատ. Զ. 13։ Ա Տիմ. Ա. 17։ Յայտ. Ե. 13։

թ Հռով. ԺԱ. 36։

† Եբր. քու ձեռքէդ

ժ Սաղ. ԼԹ. 12։ Եբր. ԺԱ. 13։ Ա Պետ. Բ. 11։

ժա Յոբ. ԺԴ. 2։ Սաղ. Ղ. 9։ ՃԲ. 11։ ՃԽԴ. 4։

‡ Եբր. ապաւինութիւն

ժբ Ա Թագ. ԺԶ. 7։ Գլ. ԻԸ. 9։

ժգ Առակ. ԺԱ. 20։

ժդ Սաղ. Ժ. 17։

‖ Կամ՝ հաստատէ՛։

ժե Սաղ. ՀԲ. 1։

Ն. Ք. ԳՔ. 1015
Հմր. 2. Գլ. ԻԲ. 14.

կանոններդ պահէ, և ամէնը 'ի գործ
դնէ, ու շինէ այն պալատը՝ որուն
համար պատրաստութիւն տեսեր
եմ ։
20 Եւ Դաւիթ բոլոր ժողովքին ը-
սաւ. Հիմա ձեր Տէր Աստուածը
օրհնեցէ՛ք. ու բոլոր ժողովքը իրենց
հայրերուն Տէր Աստուածը օրհնե-
ցին, և ծռելով՝ Տէրոջը ու թագա-
21 ւորին երկրպագութիւն ըրին ։ Ու
հետևեալ օրը զոհեր ու ողջակէզներ
մատուցին Տէրոջը. հազար զուա-
րակ, հազար խոյ, հազար գառն,
անոնց թափելու նուէրներովը.
ու բոլոր Իսրայէլին համար շատ
22 զոհեր մատուցին ։ Եւ այն օրը Տէ-
րոջը առջևը մեծ ուրախութիւնով
կերան խմեցին. ու Դաւիթին որ-
դին Սողոմոնը նորէն թագաւոր ը-
րին. ու օծեցին Տէրոջը համար թա-
գաւոր, ու Սադովկը քահանայ օ-
23 ծեցին ։ Եւ Սողոմոն իր հօրը Դա-
ւիթին տեղը՝ Տէրոջը աթոռին վը-
րայ թագաւոր նստաւ, ու յաջո-
ղութիւն գտաւ. և բոլոր Իսրայէլը
24 անոր հնազանդեցաւ ։ Ու ամէն իշ-
խանները ու զօրաւորները, և Դա-
ւիթ թագաւորին բոլոր որդիներն
ալ՝ Սողոմոն թագաւորին հնա-
25 զանդեցան ։ Ու Տէրը՝ բոլոր Իս-

Ա Թագ. Ա. 35, 39.
Գ Ժող. Ը. 2. * Եփր. ձեռք տուին. տե՛ս Ծն. ԻԴ. 2. ԽԷ. 29. Բ Մն. Լ. 8. Եզեկ. ԺԷ. 18.

րայէլին առջևը՝ Սողոմոնը խիստ
մեծցուց, և անոր այնպէս թա-
գաւորութեան փառք տուաւ, որ
անկէ առաջ Իսրայէլի վրայ թա-
գաւոր եղողի մը ամենևին եղած
չէր ։
26 Այսպէս Յեսսէի որդին Դաւիթ
բոլոր Իսրայէլի վրայ թագաւորու-
27 թիւն ըրաւ. Եւ անոր Իսրայէլի
վրայ թագաւորութիւն ըրած օրերը
քառսուն տարի եղաւ. Քեբրոնի
մէջ՝ եօթը տարի թագաւորութիւն
ըրաւ, ու Երուսաղէմի մէջ՝ երսուն-
ուիրեք տարի թագաւորութիւն
28 ըրաւ ։ Եւ բարի ծերութեամբ
մեռաւ, կեանքէն՝ մեծութենէն
ու փառքէն իր բաղձանքը առած.
և անոր տեղը՝ անոր որդին Սողոմո-
29 նը թագաւոր եղաւ ։ Ու Դաւիթ
թագաւորին առաջին ու վերջին
գործքերը՝ ահա Սամուէլ տեսանո-
ղին գրքին մէջը ; ու Նաթան մար-
գարէին գրքին մէջը, և Գադ տե-
սանողին գրքին մէջը գրուած են,
30 Նաև անոր բոլոր թագաւորութիւ-
նը, ու քաջութիւնը, ու թէ ա-
նոր, թէ Իսրայէլին, և թէ ուրիշ
երկիրներուն ամէն թագաւորու-
թեանցը պատահած դիպուածնե-
րը ։

Ն. Ք. ԳՔ. 1015
Գ Թագ. Գ. 13. Բ Մն. Ա. 12. Ժող. Բ. 9.
Բ Թագ. Ե. 4. Գ Թագ. Բ. 11.
Բ Թագ. Ե. 5.
Ծն. ԻԵ. 8. Գլ. ԻԴ. 1.
Դան. Բ. 21.

# ԵՐԿՐՈՐԴ ԳԻՐՔ ՄՆԱՑՈՐԴԱՑ

## ԳԼՈՒԽ Ա

1 Գաբաւոնի մէջ Սողոմոնին մատուցած հանդիսաւոր զոհը ։ 7 Սողոմոն՝ իմաստութիւնը ընտրելուն համար՝ Աստուծմէ կ'օրհնուի ։ 13 Սողոմոնին ուժը ու հարստութիւնը ։

Ն. Ք. ԳՔ. 1015
Գ Թագ. Բ. 46.
Ծն. ԼԹ. 2.
Ա Մն. ԻԹ. 25.
Ա Մն. ԻԷ. 1.

1 Եւ Դաւիթի որդին Սողոմոն իր
թագաւորութեանը մէջ զօրա-
ցաւ. ու անոր Տէր Աստուածը
անոր հետ էր, ու զանիկայ խիստ
2 մեծցուց ։ Եւ Սողոմոն բոլոր Իս-
րայէլին՝ այսինքն հազարապետնե-
րուն, հարիւրապետներուն, դա-
տաւորներուն, ու բոլոր Իսրայէլին
ամէն տոհմապետներուն խօսեցաւ ։
3 Եւ Սողոմոն ու բոլոր ժողովքը ա-
նոր հետ՝ Գաբաւոնի բարձր տեղը
գացին. քանզի Տէրոջը ծառային
Մովսէսին՝ անապատին մէջ շինած՝
Աստուծոյ ժողովքի խորանը հոն
4 էր. Միայն թէ Դաւիթ՝ Աստու-
ծոյ տապանակը Կարիաթարիմէն
իր պատրաստած տեղը հաներ էր.
քանզի Երուսաղէմի մէջ անոր վը-

Գ Թագ. Գ. 4. Ա Մն. ԺԶ. 39. ԻԱ. 29.
Բ Թագ. Զ. 2, 17. Ա Մն. ԺԵ. 1.
1045

5 րան մը կանգներ էր. Սակայն Ով-
րեան Ուրիին որդւոյն Բեսելիէլին
շինած պղնձէ սեղանը՝ հոն Տէրոջը
խորանին առջևն էր. և Սողոմոն ու
6 ժողովքը զանիկայ փնտռեցին ։ Եւ
Սողոմոն՝ հոն Տէրոջը առջևը ժո-
ղովքի խորանին պղնձէ սեղանին
քովը ելաւ, ու անոր վրայ հա-
զար ողջակէզ մատուց ։
7 Այն գիշերը Աստուած Սողոմոնին
երևցաւ, ու անոր ըսաւ. Խնդրէ,
8 քեզի ի՞նչ տամ ։ Եւ Սողոմոն Աս-
տուծոյ ըսաւ. Դուն իմ հօրս Դա-
ւիթին մեծ ողորմութիւն ըրիր, ու
զիս անոր տեղը թագաւոր ըրիր.
9 Հիմա ով Տէր Աստուած՝ իմ հօրս
Դաւիթին ըրած խոստմունքդ հաս-
տատ մնայ. քանզի դուն զիս՝ երկ-
րիս հողին չափ շատ ժողովուրդի
10 վրայ թագաւոր ըրիր ։ Հիմա ին-
ծի իմաստութիւն ու գիտութիւն
տուր, որ աս ժողովուրդիս առջևը
ելլեմ ու մտնեմ. վասն զի աս քու

Ն. Ք. ԳՔ. 1015
Ել. Լ. 2. Ել. ԻԷ. 1, 2. ԼԸ. 1, 2.
կամ՝ վրայ մատուց.
Գ Թագ. Գ. 4.
Գ Թագ. Գ. 5, 6.
Ա Մն. ԻԸ. 5.
Գ Թագ. Գ. 7, 8.
Գ Թագ. Գ. 9.
Թուոց. ԻԷ. 17. Բ Օր. Լա. 2.

մեծ ժողովուրդդ ո՞վ կրնայ դա-
11 տել ։ ¹Եւ Աստուած Սողոմոնին
ըսաւ. Որովհետև քու սրտիդ մէջը
ասիկայ եղաւ, ու հարստութիւն,
ստացուածք, փառք, և քու
թշնամիներուդ հոգին չխնդրեցիր,
ու երկար կեանք ալ չխնդրեցիր,
հապա քեզի իմաստութիւն ու գի-
տութիւն խնդրեցիր, որ դատես
իմ ժողովուրդս՝ որուն վրայ քեզ
12 թագաւոր ըրի, Ուրեմն իմաստու-
թիւն ու գիտութիւն տրուի քեզի,
և հարստութիւն, ստացուածք ու
փառք ալ պիտի տամ քեզի. ա-
նանկ որ՝ ²քեզմէ առաջ եղող թա-
գաւորներուն այնպէս եղած չէ, ու
քեզմէ ետքը եկողներուն ալ այնպէս
13 պիտի չըլլայ ։ Եւ Սողոմոն Գաբա-
ւոնի բարձր տեղէն՝ ժողովքի խո-
րանին առջևէն՝ Երուսաղէմ դար-
ձաւ, ու Իսրայէլի վրայ թագաւո-
րութիւն ըրաւ ։
14 ³Եւ Սողոմոն կառքեր ու ձիաւոր-
ներ ժողվեց. ու անիկայ հազար
չորս հարիւր կառք՝ ու տասներ-
կու հազար ձիաւոր ունեցաւ. և
զանոնք կառքի քաղաքներուն մէ-
ջը, ու թագաւորին քովը Երուսա-
15 ղեմի մէջ տեղաւորեց ։ ⁴Եւ թա-
գաւորը Երուսաղեմի մէջ արծաթը
ու ոսկին քարերու պէս ըրաւ, ու
եղևնափայտը շատութենէն՝ դաշտի
մէջ եղող մոլաթզենիներուն պէս
16 ըրաւ ։ Եւ ⁵Սողոմոնին ձիերը Ե-
գիպտոսէն կու գային. ու թա-
գաւորին վաճառականներուն կա-
րաւանը՝ մէկ որոշուած գնով մը
ձիերու երամակներ ծախու կ'առ-
17 նէին. Ու Եգիպտոսէն մէկ կառք
մը դուրս ելլելուն՝ վեց հարիւր
արծաթով վեր կը հանէին, ու մէկ
ձին՝ հարիւր յիսուն սիկղով. ու
Քետացւոց բոլոր թագաւորներուն
համար. և Ասորւոց բոլոր թագա-
ւորներուն համար ալ՝ անոնց ձեռ-
քովը այնպէս կը հանէին ։

Ն. Ք. ՌԺԵ. 1015
Գ Թագ. Գ. 11, 12, 13։
Համր. ԻԹ. 25։ Գլ. Թ. 22։ Ժող. Բ. 9։
Գ Թագ. Դ. 26։ Ժ. 26։ Ա։ Գլ. Թ. 25։
Գ Թագ. Ժ. 27։ Գլ. Թ. 27։ Յոբ. ԻԲ. 24։
Գ Թագ. Ժ. 28, 29։ Գլ. Թ. 28։

## ԳԼ. Բ

1. 17 Սողոմոնին գործաւորները՝ տաճարը շինելու համար։ 3 Սողոմոն՝ Քիրամին վարպետներ ու շինութեան համար նիւթ կ'ուզէ։ 11 Քիրամն ալ բարեկամօրէն պատասխան կը խրկէ։

1 Եւ Սողոմոն *միտքը դրաւ" որ Տէ-
րոջը անուանը տուն՝ ու իր թա-
2 գաւորութեանը տուն շինէ ։ Ու
Սողոմոն եօթանասուն հազար
բեռնակիր՝ ու լեռը քար կտրող
ութսուն հազար մարդ †ընտրեց, և
անոնց վրայ իրեք հազար վեց հա-
րիւր վերակացու դրաւ ։
3 Ու Սողոմոն Տիւրոսի թագաւո-
րին Քիրամին մարդ խրկեց, ու ը-
սաւ. Ինչպէս որ իմ հօրս Դաւի-

Գ Թագ. Ե. 5։
* Եբր. ըսաւ
Գ Թագ. Ե. 15։ Հմր 18։
† Եբր. համրեց։
Գ Թագ. Ե. 1։
Ա Մն. ԺԳ. 1։

թին ըրիր, ու անոր եղևնափայտեր
խրկեցիր՝ որ իրեն բնակելու համար
4 տուն շինէ, Ահա ես իմ Տէր Աս-
տուծոյս անուանը տուն կը շինեմ,
որ անոր նուիրուի, անոր առջևը
անուշահոտ խունկ ծխուի, ու միշտ
առաջաւորութեան հացը դրուի, և
առտու ու իրիկուն, շաբաթները,
և ամսագլուխները ու մեր Տէր Աս-
տուծոյն տօներուն օրերը՝ ողջակէզ-
ներ մատուցանելու. ասիկայ Իսրայէ-
լին յաւիտենական պարտաւորու-
5 թիւնն է ։ Եւ աս տունը որ ես կը
շինեմ, մեծ ըլլալու է. քանզի
մեր Աստուածը՝ ամէն աստուած-
6 ներէն մեծ է. Ու անոր տուն շի-
նելու ո՞վ կարող է. քանզի եր-
կինքը, ու երկնից երկինքը չեն
կրնար պարունակել զանիկայ, ու-
րեմն ես ո՞վ եմ, որ անոր տուն
շինեմ. միայն թէ անոր առջևը
խունկ ծխելու համար տեղ մը
7 պատրաստեմ ։ Եւ հիմա ինծի մէկ ի-
մաստուն մարդ մը խրկէ, որ ոսկին,
արծաթը, պղինձը, երկաթը, ծի-
րանեգոյնը, կարմիրը և կապուտակը
բանիլ գիտնայ, ու քանդակագոր-
ծութիւն ալ գիտնայ, որ իմ քովս
Յուդայի ու Երուսաղեմի մէջ ե-
ղող՝ իմ հօրս Դաւիթին պատ-
րաստած իմաստուններուն հետ
8 ըլլայ ։ Եւ ինծի Լիբանանէն ե-
ղևնափայտեր, մայր փայտեր ու
Ալմուկ փայտեր խրկէ. քանզի
ես գիտեմ որ քու ծառաներդ
Լիբանանէն փայտ կտրելը գիտեն.
և ահա իմ ծառաներս քու ծառա-
9 ներուդ հետ ըլլան, Ու ինծի խիստ
շատ փայտեր պատրաստեն. քանզի
իմ շինելու տունս մեծ ու փառաւոր
10 ըլլալու է ։ Եւ ահա ես քու ծա-
ռաներուդ՝ փայտ կտրող բանւոր-
ներուն՝ քսան հազար քոռ ծե-
ծուած ցորեն, ու քսան հազար
քոռ գարի, ու քսան հազար մար
գինի, ու քսան հազար մար եղ կու
տամ ։
11 Եւ Տիւրոսի Քիրամ թագաւորը
Սողոմոնին նամակ խրկեց՝ ու ըսաւ.
Տէրը իր ժողովուրդը սիրելուն
համար՝ քեզ անոնց վրայ թագաւոր
12 դրաւ ։ Եւ Քիրամ ըսաւ. Եր-
կինքը ու երկիրը ստեղծող Իսրա-
յէլին Տէր Աստուածը օրհնեալ ըլ-
լայ, որ Դաւիթ թագաւորին՝ խո-
հեմութիւն ու գիտութիւն ունե-
ցող իմաստուն որդի մը տուաւ, որ
անիկայ Տէրոջը տուն, ու իր թա-
գաւորութեանը տուն պիտի շինէ ։
13 Եւ հիմա իմ ‡վարպետս Քիրամը
կը խրկեմ, որ հանճարեղ ու իմաս-
14 տուն մարդ մըն է. Անիկայ Դանի
աղջիկներէն եղող կնկան մը որդի

Ն. Ք. ՌԺԵ. 1015
Հմր 1։
Ել. Լ. 7։
Ել. ԻԵ. 30։ Ղև. ԻԴ. 8։
Թուոց. ԻԸ. 8, 9, 11։
Սաղ. ՃԼԵ. 5։
Գ Թագ. Ը. 27։ Գլ. Զ. 18։ Ես. ԿԶ. 1։
Ա Մն. ԻԲ. 15։
Գ Թագ. Ե. 6։
Գ Թագ. Ժ. 11։
Գ Թագ. Ժ. 9։ Գլ. Թ. 8։
Ծն. Ա. 2։ Սաղ. ԼԳ. 6։ ՃԲ. 25։ ՃԻԴ. 8։ ՃԼԶ. 5, 6։ Գործ. Դ. 24։ Ժդ. 14։ Յայտ. Ժ. 6։
Գ Թագ. Է. 7։
‡ Եբր. հայրս
Գ Թագ. Է. 13, 14։

Ն. Ք. Ք. 1015

է, ու անոր հայրը Տիւրացի է. ա-
նիկայ՝ ոսկի, արծաթ, պղինձ, եր-
կաթ, քարեր ու փայտեր, ծի-
ծիրանեգոյնի, կապուտակի, բեհե-
զի և կարմիրի վրայ բանելու կող-
մանէ, ու ամէն տեսակ քանդակը
քանդակելու կողմանէ յաջողակ է.
և քու իմաստուններուդ հետ, ու
քու հօրդ Դաւիթին՝ իմ տիրոջս
իմաստուններուն հետ՝ իրեն ամէն
առաջարկուած բանին հնարքը կը
15 գտնէ: Եւ հիմա իմ տէրս իր ը-
սած ցորենը ու գարին, եղը ու
գինին իր ծառաներուն թող խրկէ.
16 Ու մենք Լիբանանէն՝ քեզի հար-
կաւոր եղածին չափ փայտեր կը
կտրենք, և զանոնք ծովէն լաստեր
շինելով՝ Յոպպէ կը բերենք քեզի,
ու դուն զանոնք Երուսաղէմ հա-
նէ:
17 Ու Սողոմոն Իսրայէլի երկրին մէ-
ջը եղող բոլոր օտարազգի մարդիկ-
ները՝ իր հօրը Դաւիթին համրե-
լէն ետքը համրեց. և անոնք հարիւր
յիսունուիրեք հազար վեց հարիւր
18 մարդ գտնուեցան. Ու անոնցմէ եօ-
թանասուն հազար բեռնակիր, ու
լեռը քար կտրող ութսուն հա-
զար, ու զանոնք բանեցնելու հա-
մար՝ իրեք հազար վեց հարիւր վե-
րակացու ըրաւ:

Հմր 10:
գ Թագ. ե. 8, 9:
Յես. ժթ. 46: Գոր. թ. 36:
Հմր 2: գ Թագ. ե. 13, 15, 16: թ. 20, 21: Գլ. ը. 7, 8: ա Մն. իբ. 2:
Հմր 2:

## ԳԼ. Գ

1 Տաճարին տեղը ու շինութեան սկզբնաւորու-
թիւնը: 3 Անոր չափերը ու զարդերը: 11 Քե-
րովբէները: 14 Վարագոյրը ու սիւները:

1012

1 Եւ Սողոմոն սկսաւ Տէրոջը տունը
շինել Երուսաղէմի մէջ՝ Մօրիա
լեռանը վրայ՝ ուր որ Տէրը անոր
հօրը Դաւիթին երեւցեր էր, այն
տեղը՝ որն որ Դաւիթ Յեբուսացի
Ոռնայի կալին մէջը պատրաստեր
2 էր: Եւ իր թագաւորութեանը
չորրորդ տարին՝ երկրորդ ամսուն
երկրորդ օրը սկսաւ շինել:
3 Ու Աստուծոյ տունը շինելու հա-
մար՝ Սողոմոնին դրած հիմը ասիկայ
էր. առջի չափով՝ վաթսուն կան-
գուն երկայն, ու քսան կանգուն
4 լայն էր: Եւ դիմացը եղող սրա-
հին երկայնութիւնը՝ տանը լայ-
նութեամբը քսան կանգուն, ու
բարձրութիւնը հարիւր քսան կան-
գուն էր. ու զանիկայ ներսէն մա-
5 քուր ոսկիով պատեց: Եւ մեծ
տունը մայր փայտով ծածկեց, ու
զանիկայ մաքուր ոսկիով պատեց,
ու անոր վրայ արմաւենիներ ու
6 շղթաներ * փորագրեց: Եւ շքե-
ղութեան համար՝ տունը պա-
տուական քարերով զարդարեց.
7 ու ոսկին՝ Փարուիմի ոսկի էր: Եւ
տանը գերանները, սեմերը, պա-
տերը ու դռները ոսկիով պատեց.
ու պատերուն վրայ քերովբէներ
քանդակեց:
8 Եւ սրբութեանց սրբութիւնին
տունը շինեց. անոր երկայնութիւ-
նը տանը լայնութեանը պէս՝ քսան
կանգուն, ու լայնութիւնը քսան
կանգուն էր. և զանիկայ վեց հա-
րիւր տաղանդի չափ մաքուր ոսկի-
9 ով պատեց: Ու բեւեռներուն կը-
շիռքը յիսունական սիկղ ոսկի էր.
ու վերնատունները ոսկիով պա-
10 տեց: Եւ սրբութեանց սրբու-
թիւնին տանը մէջ երկու քանդա-
կագործ քերովբէներ շինեց, ու զա-
11 նոնք ոսկիով պատեց. Եւ քերով-
բէներուն թեւերը քսան կանգուն
երկայնութիւն ունէին. մէկ թեւը
հինգ կանգուն էր, ու տանը պա-
տին կը դպչէր, և միւս թեւը հինգ
կանգուն էր, ու մէկալ քերովբէին
12 թեւին կը դպչէր. Մէկալ քերովբէին
ալ մէկ թեւը հինգ կանգուն էր, ու
տանը պատին կը դպչէր, ու միւս
թեւը հինգ կանգուն էր, ու մէկալ
13 քերովբէին թեւին կցուած էր: Այս
քերովբէներուն տարածուած թեւե-
րուն երկայնութիւնը՝ քսան կանգուն
էր. ու անոնք իրենց ոտքերուն
վրայ կայնած էին, ու անոնց երեսը
դէպ ՚ի տունը կը նայէր:
14 Եւ վարագոյրը՝ կապուտակէ,
ծիրանիէ, կարմրէ ու բեհեզէ շի-
նեց, ու անոր վրայ քերովբէներ
գործեց:
15 Եւ տանը առջեւը՝ երեսունը-
հինգ կանգուն երկայնութեամբ եր-
կու սիւն շինեց, ու ամէն մէկուն
վրայի խոյակը հինգ կանգուն էր:
16 Եւ դաբիրին մէջի շղթաներուն պէս՝
շղթաներ շինեց, ու սիւներուն
վ[illegible] դրաւ. և հարիւր նուռ շի-
[illegible], ու շղթաներուն անցուց:
17 Եւ սիւները տաճարին առջեւը
կանգնեց, մէկը աջ կողմէն՝ ու մէ-
կալը ձախ կողմէն. և աջ կողմի
եղողին անունը Յաքին, ու ձախ
կողմի եղողին անունը Բոոզ կոչեց:

գ Թագ. զ. 1, ...:
Ծն. իբ. 2, 14:
ա Մն. իա. 18: իբ. 1:
գ Թագ. զ. 2:
գ Թագ. զ. 3:
գ Թագ. զ. 17:
* Եբր. հանեց:

Ն. Ք. Ք. 1012

գ Թագ. զ. 23, ...:
† Կամ՝ ներս
Ել. իզ. 31: Մատ. իէ. 51: Եբր. թ. 3:
գ Թագ. է. 15—21: Երեմ. ծբ. 21:
գ Թագ. է. 20:
գ Թագ. է. 21:

## ԳԼ. Դ

1 Պղնձէ սեղանը: 2 Ձուլածոյ ծովը տասուեր-
կու եզներու վրայ: 6 Տասը աւազանները,
աշտանակները ու սեղանները: 9 Գաւիթնե-
րը, ու պղնձէ գործիքները: 19 Ոսկեղէն
անօթները:

1 Եւ պղնձէ սեղան մը շինեց, եր-
կայնութիւնը քսան կանգուն,
և լայնութիւնը քսան կանգուն, ու
բարձրութիւնը տասը կանգուն:
2 Եւ ձուլածոյ ծովը շինեց. ա-
մէկ շրթունքէն մինչև մէկալ շըր-
թունքը տասը կանգուն էր, ու
բոլորաձև էր, և անոր բարձրու-

Ել. իէ. 1, 2: դ Թագ. ժզ. 14: Եզեկ. խգ. 13, 16:
գ Թագ. է. 23:

Ն․Ք․ ՉԲ․ 1012

ա Գ Թագ․ է․ 24, 25, 26։

թիւնը հինգ կանգուն էր, ու անոր
շրջապատը երսուն կանգուն էր․
3 ա Եւ անոր տակը շուրջանակի ամէն
կողմէն եզներու նմանութիւններ
կային․ ծովուն բոլորտիքը մէկ
կանգունի մէջ տասնական եզներ
կար․ ու եզները երկու կարգ էին,
որոնք ծովը ձուլած ատենին ձու-
4 լեր էին։ Անիկայ տասուերկու եզ-
ներու վրայ կը կենար, որոնց իրեքը
դէպ 'ի հիւսիս՝, իրեքը դէպ 'ի
արեւմուտք, իրեքը դէպ 'ի հարաւ,
ու իրեքը դէպ 'ի արեւելք կը նա-
յէին, ու ծովը անոնց վրայ էր, և՝
ամենուն ետեւի կողմը դէպ 'ի ներս
5 դարձած էր։ Ու անոր թանձրու-
թիւնը չորս մատնաչափ էր, և
շրթունքը գաւաթի շրթունքի
պէս էր, ու շուշանի ծաղիկ-
ներ շինուած էր, ու բ իրեք հազար
մար կ'առնէր։

բ Տես Գ Թագ․ է․ 26։

6 Եւ գ տասը աւազան շինեց․ ու
հինգը աջ կողմը ու հինգն ալ ձախ
կողմը դրաւ՝ լուացման համար․
*ողջակէզները անոնց մէջը կը լուա-
յին․ բայց ծովը քահանայից հա-
մար էր, որ հոն լուացուէին։

գ Գ Թագ․ է․ 38։
*Եբր․ ողջակէզի գործը

7 դ Եւ տասը ոսկեղէն աշտանակնե-
րը շինեց ե իրենց օրինակին համե-
մատ, ու զանոնք տաճարին մէջը
դրաւ․ հինգը աջ կողմը ու հինգը
ձախ կողմը։

դ Գ Թագ․ է․ 49։
ե Ել․ ԻԵ․ 31, 40։ Թուոց․ Ը․ 12, 19։

8 զ Եւ տասը սեղան շինեց, ու զա-
նոնք տաճարին մէջը դրաւ․ հինգը
աջ կողմը ու հինգը ձախ կողմը․
ու հարիւր ոսկեղէն կոնքեր շինեց։

զ Գ Թագ․ է․ 48։

9 Եւ է քահանայից գաւիթը, ու
մեծ գաւիթը, և գաւիթին դռնե-
րը շինեց, ու անոնց փեղկերը պղին-
10 ձով պատեց։ Եւ ը ծովը աջ կողմը՝
հարաւոյ դէմ դէպ 'ի արեւելք դը-
րաւ։

է Գ Թագ․ Զ․ 36։
ը Գ Թագ․ է․ 39։

11 Ու թ Քիրամ՝ կաթսաները, թի-
ակները ու կոնքերը շինեց․ և Քի-
րամ կատարեց ան բոլոր գործքերը՝
որ Աստուծոյ տանը համար Սողոմոն
12 թագաւորին կը շինէր․ Այսինքն եր-
կու սիւները, ու ժ գունտերը, ու
երկու սիւներուն գլուխը եղող խո-
յակները, և սիւներուն գլուխը ե-
ղող խոյակներուն երկու գունտերը
ծածկելու համար երկու ցանցակերպ
13 զարդերը, Ու երկու ցանցակերպ
զարդերուն ի չորս հարիւր նուռե-
րը, այսինքն՝ սիւներուն վրայի խո-
յակներուն երկու գունտերը ծած-
կելու համար՝ ամէն մէկ ցանցակերպ
զարդին վրայ երկու կարգ նուռեր․
14 Եւ լ մեքենովթները շինեց, ու մե-
քենովթներուն վրայի աւազաննե-
15 րը շինեց․ Մէկ ծովը ու անոր տա-
16 կի տասուերկու եզները․ Եւ կաթ-
սաները, ու թիակները, ու մսա-

թ Տես Գ Թագ․ է․ 40։
ժ Գ Թագ․ է․ 41։
ի Տես Գ Թագ․ է․ 20։
լ Գ Թագ․ է․ 27, 43։

հանները, և անոնց բոլոր գործիք-
ները՝ Տէրոջը տանը համար Սողոմոն
թագաւորին՝ փայլուն պղնձէ շինեց
17 խ անոր վարպետը Քիրամ։ ծ Թա-
գաւորը զանոնք Յորդանանու դաշ-
տին մէջ թանձր հողի մը վրայ ձու-
լել տուաւ Սոկքովթի ու կ Սարե-
18 դայի մէջտեղը։ հ Եւ Սողոմոն աս
բոլոր կարասիները խիստ շատ շի-
նեց․ քանզի պղինձը կշիռքի չէր
19 գար։ Ու ձ Սողոմոն՝ Աստուծոյ
տանը բոլոր կարասիները շինեց․
նաև ոսկիէ սեղանը, ու ան
սեղանները՝ որոնց վրայ ղ առաջա-
20 ւորութեան հացը կը դրուէր․ Եւ
մաքուր ոսկիէ աշտանակները, ու
անոնց ճ ճրագները՝ դաբիրին առ-
ջեւը վառելու համար ըստ սովորու-
21 թեան։ Եւ մ մաքուր ոսկիէ ծա-
ղիկները, ու ճրագները, և ունե-
22 լիները, Ու մաքուր ոսկիէ բազմա-
կալները, տաշտերը, խնկամաննե-
րը, ու բուրվառները․ և տանը
դռները՝ այսինքն սրբութեանց սըր-
բութիւնին ներսի դրանը փեղկերը,
և տանը՝ այսինքն տաճարին դրանը
փեղկերը ոսկիէ շինեց։

Ն․Ք․ ՉԲ․ 1012

խ Գ Թագ․ է․ 14, 45։
ծ Գ Թագ․ է․ 46։
կ Կամ՝ Սարթանի․ Գ Թագ․ է․ 46։
հ Գ Թագ․ է․ 47։
ձ Գ Թագ․ է․ 48, 49, 50։
ղ Ել․ ԻԵ․ 30։
ճ Ել․ ԻԷ․ 20, 21։
մ Ել․ ԻԵ․ 31, ԼԸ։

## ԳԼ․ Ե

1 Նուիրուած գանձերը։ 2 Տապանակին հան-
դիսաւոր կերպով դաբիրի մէջ դրուիլը։ 11
Երբոր զԱստուած կ'օրհնեն, անիկայ տեսա-
նելի կերպով իր հաճութեանը նշան մը կու
տայ։

1 Եւ յ Սողոմոնին Տէրոջը տանը հա-
մար շինած բոլոր գործը լմըն-
ցաւ․ ու Սողոմոն իր հօրը Դաւի-
թին նուիրած բաները, և արծա-
թը, ու ոսկին, ու բոլոր անօթ-
ները տարաւ, և Աստուծոյ տանը
գանձին մէջ դրաւ։

1005
յ Գ Թագ․ է․ 51։

2 ն Ան ատենը Սողոմոն՝ Իսրայէլի
ծերերը, ու ցեղերուն բոլոր իշ-
խանները, Իսրայէլի որդւոց նա-
հապետները՝ Երուսաղէմի մէջ ժող-
վեց, որ Տէրոջը ուխտին տապանա-
կը շ Դաւիթին քաղաքէն՝ այսինքն
3 Սիօնէն հանեն։ ո Եւ Իսրայէլի
բոլոր մարդիկները չ եօթներորդ
ամսուն տօնին ատենը՝ թագաւորին
4 քովը ժողվուեցան։ Ու Իսրայէլի
բոլոր ծերերը եկան․ ու Ղևտացի-
5 ները տապանակը վերցուցին։ Եւ
տապանակը, ու ժողովքի խորանը,
և խորանին մէջը եղած բոլոր սուրբ
անօթները հանեցին․ զանոնք քա-
հանաները ու Ղևտացիները հանե-
6 ցին։ Եւ Սողոմոն թագաւորը ու
անոր քովը ժողվուած Իսրայէլին
բոլոր ժողովքը՝ տապանակին առ-
ջեւը ըլլալով, ոչխարներ ու ար-
ջառներ կը զոհէին, այնչափ շատ՝
որ անթիւ ու անհամար էին։

1004
ն Գ Թագ․ Ը․ 1, ևն․
շ Բ Թագ․ Զ․ 12։
ո Գ Թագ․ Ը․ 2։
չ Տես Ղև․ ԻԳ․ 8, 9, 10։

Ն․ Ք․ ԴՔ․ 1004

7 Եւ քահանաները Տէրոջը ուխ-
տին տապանակը ներս տարին իր
տեղը՝ տանը դաբիրը՝ սրբու-
թիւն սրբութեանցը, ու քերով-
բէներուն թեւերուն տակը դր-
8 րին։ Ու քերովբէները տապանա-
կին տեղւոյն վրայ իրենց թեւերը կը
տարածէին. և քերովբէները տա-
պանակը ու անոր ձողերը վերէն կը
9 ծածկէին։ Եւ ձողերը երկընցու-
ցին. և ձողերուն ծայրերը տապա-
նակէն՝ դաբիրին առջևը կ'երևնա-
յին, բայց դուրսէն չէին երևնար.
Գ Թագ․ Ը․ 8։ 10 ու մինչև աս օրս հոն է։ Տապա-
նակին մէջը ուրիշ բան չկար, բայց
միայն երկու տախտակները, որ
Ե Օր․ Ժ․ 2․ 5։ Գլ․ Զ․ 11։ Մովսէս Քորեբի մէջ հոն դրաւ.
որոնցմով Տէրը Իսրայէլի որդւոցը
հետ ուխտ ըրաւ, անոնց Եգիպտո-
սէն ելած ատենը։
11 Ու երբոր քահանաները սուրբ
տեղէն ելան, (վասն զի բոլոր հոն
գտնուող քահանաները սրբուեր
էին, չէ թէ իրենց յաջորդական
Զ Ա Մն․ ԻԵ․ 1։ 12 կարգը պահելով. Ու երգեցող
Ղևտացիներուն բոլորը՝ Ասափին,
Եմանին ու Իդիթունին, և ա-
նոնց որդիներուն ու եղբայրներուն
հետ՝ բեհեզներ հագած, ծնծղանե-
րով՝ տաւիղներով ու քնարներով՝
սեղանին արևելեան կողմը կայնե-
Ը Ա Մն․ ԺԵ․ 24։ ցան. Ու անոնց հետ հարիւր քսան
քահանայ փող կը հնչեցընէին.)
13 Ու երբոր փող հնչեցընողները ու
երգեցողները միաբերան մէկ ձայնով
Տէրը կ'օրհնէին ու կը գովէին, և
փողերով, ծնծղաներով, ու երգոց
նուագարաններով ձայներնին վեր-
ցընելով՝ Տէրը կ'օրհնէին, ըսելով.
Ժ Սաղ․ ՃԼԶ․ Տ Ա Մն․ ԺԶ․ 34․ 41։ Գոհացէ՛ք Տէրոջը, ինչու որ
բարի է, ինչու որ անոր ողորմու-
թիւնը յաւիտեան է.
Ան ատենը Տէրոջը տունը ամ-
14 պով լեցուեցաւ. Եւ ամպին պատ-
ճառաւը քահանաները չէին կրնար
Ի Ել․ Խ․ 35։ Գլ․ Է․ 2։ հոն կենալ, որ իրենց պաշտօնը կա-
տարեն. Ի քանզի Տէրոջը փառքը
Աստուծոյ տունը լեցուցեր էր։

Գլ. Զ

1 Սողոմոն՝ ժողովուրդը օրհնելէն ետև զԱս-
տուած կ'օրհնէ։ 12 Տաճարին նաւակատիսց
օրը՝ պղնձէ կայարանին վրայ Սողոմոնին մա-
տուցած աղօթքը։

Ա Գ Թագ․ Ը․ 12, 13։ Բ Ղև․ ԺԶ․ 2։ 1 Ան ատենը Սողոմոն ըսաւ. Տէրը
ըսաւ որ ինքը Բ մառախուղի մէջ
2 կը բնակի։ Բայց ես քեզի բնա-
կութեան համար տուն՝ ու յաւի-
տեան քու նստելուդ համար տեղ
3 շինեցի։ Եւ թագաւորը իր երեսը
դարձուց, ու Իսրայէլի բոլոր ժո-
ղովքը օրհնեց. ու Իսրայէլի բոլոր
ժողովքը ոտքի վրայ կայներ էին։

4 Եւ անիկայ ըսաւ. Օրհնեալ ըլլայ
Իսրայէլի Տէր Աստուածը, որ իր
բերնովը իմ հօրս Դաւիթին խօսք
տուաւ, ու իր ձեռքովը կատարեց.
5 քանզի ըսաւ. Իմ ժողովուրդս Ե-
գիպտոսի երկրէն հանած օրէս 'ի
վեր՝ Իսրայէլի բոլոր ցեղերէն բնաւ
մէկ քաղաք մը չընտրեցի տուն շի-
նելու համար, որ իմ անունս հոն
ըլլայ, ու մարդ մը չընտրեցի, որ
իմ ժողովուրդիս Իսրայէլին վրայ
6 իշխան ըլլայ. Գ Հապա Երուսաղէմը Գ Գլ․ ԺԲ․ 13։
ընտրեցի, որ իմ անունս հոն ըլլայ.
ու Դ Դաւիթը ընտրեցի, որ իմ ժո- Դ Ա Մն․ ԻԸ․ 4։
ղովուրդիս Իսրայէլին վրայ Բաղա-
7 ւոր ըլլայ. Եւ Ե իմ հայրս Դաւիթ Ե Բ Թագ․ Է․ 2։ Ա Մն․ ԺԷ․ 1։ ԻԲ․ 2։
միտք ունէր որ Իսրայէլի Տէր Աս-
տուծոյն անուանը տուն մը շինէ.
8 Բայց Տէրը իմ հօրս Դաւիթին ը-
սաւ. Որովհետև դուն միտքդ դրիր
որ իմ անուանս տուն շինես, աղէկ
ըրիր որ աս բանը միտքդ դրիր.
9 Սակայն տունը դուն պիտի չշինես.
հապա քու որդիդ՝ որ քու երանքէդ
պիտի ելլէ, անիկայ իմ անուանս
10 տուն պիտի շինէ։ Եւ հիմա Տէրը
իր ըսած խօսքը կատարեց, ու ես
իմ հօրս Դաւիթին տեղը յաջորդե-
ցի, ու Տէրոջը ըսածին պէս՝ Իս-
րայէլի աթոռը նստայ, ու Իսրա-
յէլի Տէր Աստուծոյն անուանը՝ աս
11 տունը շինեցի։ Եւ հոն դրի տա-
պանակը՝ Զորուն մէջն է Տէրոջը Զ Գլ․ Ե․ 10։
ուխտը, որն որ Իսրայէլի որդւոցը
հետ ըրաւ։
12 Է Ու Տէրոջը սեղանին առջևը՝ Իս- Է Գ Թագ․ Ը․ 22։
րայէլի բոլոր ժողովքին դիմացը
կայնելով, ձեռքերը տարածեց.
13 (Քանզի Սողոմոն պղնձէ խարիսխ
մը շինելով՝ զանիկայ գաւիթին
մէջտեղը դրեր էր. անոր երկայնու-
թիւնը հինգ կանգուն, ու լայնու-
թիւնը հինգ կանգուն, ու բարձ-
րութիւնը իրեք կանգուն էր. և
ինքը անոր վրայ կայնեցաւ, ու Իս-
րայէլի բոլոր ժողովքին առջևը
ծունկ չոքեց, ու ձեռքերը դէպ 'ի
երկինքը տարածեց.)
14 Եւ ըսաւ. Ով Տէր Աստուած
Իսրայէլի, Ըերկինքի մէջ՝ ու երկրի Ը Ել․ ԺԵ․ 11։ Բ Օր․ Դ․ 39։ Է․ 9։
վրայ քեզի պէս Աստուած չկայ, որ
քու առջևդ իրենց բոլոր սրտովը
քալող ծառաներուդ հետ ուխտ ու
15 ողորմութիւն կը պահես. Թ Դուն Թ Ա Մն․ ԻԲ․ 9։
քու ծառայիդ՝ իմ հօրս Դաւի-
թին ըրած խոստմունքդ պահեցիր,
ու բերնովդ ըսածդ ձեռքովդ կա-
տարեցիր. ինչպէս որ այսօր կ'երև-
16 նայ։ Եւ հիմա ով Տէր Աստուած
Իսրայէլի, պահէ՛ ան խոստմունքդ. Ժ Բ Թագ․ Է․ 12․ 16։ Գ Թագ․ Բ․ 4․ Թ․ 12։ Գլ․ Է․ 18։
որն որ քու ծառայիդ՝ իմ հօրս
Դաւիթին ըրիր, ու ըսիր. Ժ Իմ
առջևս Իսրայէլի աթոռին վրայ

Ն. Ք. ԴՔ. 1004

նստող մարդ քեզմէ պակաս պիտի
չըլլայ . [ե]միայն թէ քու որդիքդ ի-
րենց ճամբաներուն զգուշութիւն
ընեն , ու իմ օրէնքիս մէջը քալեն ,
ինչպէս որ դուն իմ առջևս քալե-
17 ցիր ։ Եւ հիմա ո՛վ Տէր Աստուած
Իսրայէլի , թող քու ծառայիդ՝
Դաւիթին ըսած խօսքդ հաստա-
տուի ։

Ե Սաղ. ճլբ. 12 ։

18 Բայց միթէ Աստուած իրաւցընէ
երկրիս վրայ մարդոց հետ պիտի
բնակի՞ . Նահա՛ երկինքը ու երկնից
երկինքը քեզ չեն կրնար պարունա-
կել . ո՞ւր կը մնայ աս իմ շինած
19 տունս ։ Սակայն ո՛վ Տէր Աս-
տուած իմ , քու ծառայիդ աղօթ-
քին ու խնդրուածքին նայէ՛ , որ
քու ծառայիդ այսօր քու առջևդ
ըրած պաղատանքը ու աղօթքը
20 լսես . Որպէս զի աս տանը վրայ
ցորեկ ու գիշեր քու աչքերդ բաց
ըլլան , ան տեղւոյն վրայ՝ որուն
համար ըսիր թէ՝ քու անունդ հոն
պիտի դնեմ . այնպէս որ՝ աս տե-
ղը քու ծառայիդ ըրած աղօթքը
21 լսես ։ Ուրեմն քու ծառայիդ՝ և
քու ժողովուրդիդ Իսրայէլին աս
տեղը ըրած աղօթքները լսես . այո՛
քու բնակութեանդ տեղէն՝ եր-
կինքէն լսես , ու լսած ատենդ նե-
րես ։

Լ Գւ. բ. 6 ; Ես. կզ. 1 ; Գոր. է. 49 ։

22 Թէ որ մէկը իր ընկերին դէմ
մեղանչէ , ու ան ալ երդում ընել
տալու համար՝ անոր երդում ա-
ռաջարկէ , ու երդումը աս տունը՝
23 քու սեղանիդ առջևը գայ , Ան ա-
տենը դուն երկինքէն լսես ու կա-
տարես . ու քու ծառաներդ դա-
տես . և յանցաւորը դատապար-
տես , ու անոր ըրածը անոր գլուխը
բերես . և արդարը արդարացընես ,
ու անոր արդարութեանը չափովը
անոր հատուցում ընես ։
24 Եւ թէ որ քու ժողովուրդդ Իս-
րայէլը՝ քեզի դէմ մեղանչելնուն
համար՝ իրենց թշնամիներուն առ-
ջևը յաղթուին , ու ետ դառնան
և քու անուանդ փառք տան . ու
աս տանս մէջ քու առջևդ աղօթք
25 ու աղաչանք ընեն , Ան ատենը
դուն երկինքէն լսես , և քու ժողո-
վուրդիդ Իսրայէլին մեղքը ներես .
ու անոնց՝ և անոնց հայրերուն
տուած երկիրդ դարձընես զանոնք ։
26 Թէ որ անոնց քեզի դէմ մեղք
գործելուն համար [ի]երկինքը գո-
ցուի , ու անձրև չգայ . ու անոնք
աս տեղս քեզի աղօթք ընեն , և քու
անուանդ փառք տան , ու զանոնք
նեղելուդ համար՝ իրենց մեղքերէն
27 դառնան , Ան ատենը դուն երկին-
քէն լսես , և քու ծառաներուդ ու
քու ժողովուրդիդ Իսրայէլին մեղ-

Ի Գ Թագ. Է. ժէ. 1 ։

Ն. Ք. ԴՔ. 1004

քը ներես , որ անոնց սորվեցընես
ան աղէկ ճամբան՝ որուն մէջը պի-
տի քալեն . ու քու ժողովուրդիդ
ժառանգութիւն տուած երկրիդ
վրայ անձրև տաս ։
28 Թէ որ [ժ]երկրի վրայ սով , կամ
ժանտախտ , կամ խորշակահարու-
թիւն , կամ արմտեաց դալուկ , կամ
մարախ , կամ թրթուր ըլլայ ,
կամ անոնց թշնամիները զանոնք
իրենց *բնակած երկրին մէջը նե-
ղեն , կամ ո՛ր և իցէ հարուած կամ
29 հիւանդութիւն ըլլայ , Քու բոլոր
ժողովուրդէդ Իսրայէլէն ո՛ր և իցէ
մարդ՝ աղօթք մը ու խնդրուածք
մը ընելու ըլլայ , ու իւրաքանչիւր
մարդ իր ախտը ու ցաւը ճանչնա-
լով՝ ձեռքերը դէպ ի աս տունը
30 երկընցընէ , Ան ատենը դուն եր-
կինքէն՝ քու բնակութեանդ տե-
ղէն լսես , ու ներես . և ամէն մար-
դու՝ իր բոլոր ճամբաներուն հա-
մեմատ հատուցում ընես , անոր
սիրտը գիտնալուդ համար . վասն
զի [լ]մարդոց որդիներուն սիրտը
31 մինակ դուն գիտես . Որպէս զի
քեզմէ վախնան ու քու ճամբանե-
րուդ մէջը քալեն բոլոր իրենց օրե-
րուն մէջը , որչափ ժամանակ որ մեր
հայրերուն տուած երկրիդ վրայ
պիտի ապրին ։

Ժ Գւ. ի. 9 ։

* Եբր. գերու-ներուն

Լ Ա Մն. իը. 9 ։

32 Ու [հ]քու ժողովուրդէդ Իսրայէլէն
չեղող՝ և հեռաւոր երկրէ մը քու
մեծ անուանդ համար՝ և զօրաւոր
ձեռքիդ համար՝ ու բարձր բազու-
կիդ համար եկող օտարականն ալ՝
թէ որ գայ ու աս տանս մէջ ա-
33 ղօթք ընէ , Դուն երկինքէն քու
բնակութեանդ տեղէն լսես , և օ-
տարականին քեզի ըրած ամէն
խնդրուածքը կատարես , որ երկրիս
ամէն ժողովուրդները քու անունդ
ճանչնան , ու քու ժողովուրդիդ
Իսրայէլին պէս քեզմէ վախնան , և
գիտնան թէ աս իմ շինած տանս
վրայ քու անունդ կոչուած է ։

Հ Յովհ. ժբ. 20 ; Գոր. ը. 27 ։

34 Երբոր քու ժողովուրդդ իր
թշնամիին դէմ պատերազմի եր-
թայ ան ճամբով՝ որ դուն պիտի
ղրկես զանոնք , թէ որ անոնք աս
քու ընտրած քաղաքիդ , ու քու
անուանդ համար աս իմ շինած
տանս կողմը նայելով՝ քեզի աղօթք
35 ընեն , Երկինքէն անոնց աղօթքը
ու խնդրուածքը լսես , և անոնց
իրաւունք ընես ։
36 Երբոր քեզի դէմ մեղք գործեն ,
(քանզի [յ]մեղք չգործող մարդ չը-
կայ , ) ու անոնց բարկանալով՝ զա-
նոնք թշնամիին ձեռքը մատնես ,
ու անոնց գերեվարները հեռու կամ
մօտ երկիր մը գերի տանին զանոնք ,
37 Թէ որ ան իրենց գերութեան երկ-

Յ Առակ. ի. 9 ; Ժող. է. 20 ; Յակ. գ. 2 ; Ա Յովհ. ա. 8 ։

Ն. Ք. ԶՖ. 1004

րին մէջը գերշի գան ու դառնան, և իրենց գերութեան երկրին մէջը քեզի աղաչեն ու ըսեն. Մեղք գործեցինք, անօրէնութիւն ու անի-
38 րաւութիւն ըրինք. Եւ թէ որ անոնք իրենց գերութեան երկրին մէջը՝ ուր որ գերի տարուած են, իրենց բոլոր սրտովը ու իրենց բոլոր հոգիովը քեզի դառնան, ու իրենց երկրին՝ որ իրենց հայրերուն տուիր, և քու ընտրած քաղաքիդ, ու քու անուանդ համար իմ շինած տանս
39 կողմը նայելով՝ աղօթք ընեն, Դուն երկինքէն քու բնակութեանդ տեղէն անոնց աղօթքը ու խնդրուածքը լսես, ու անոնց իրաւունք ընես, և քու ժողովուրդիդ քեզի
40 դէմ ըրած մեղքը ներես ։ Հիմա ով Աստուած իմ, աս տեղը մատուցուած աղօթքին թող քու աչքերդ բաց ըլլան, ու քու ականջ-
41 ներդ մտիկ ընեն ։ Եւ ՂՀիմա ով Տէր Աստուած, ՃՔու հանգստութեանդ տեղը ելիր, դուն՝ ու քու զօրութեանդ տապանակը. ով Տէր Աստուած՝ քու քահանաներդ փրկութիւն հագնին, և քու սուրբերդ Ճբարութիւնով ուրախանան ։
42 Ո՛վ Տէր Աստուած՝ քու օծեալիդ երեսը մի՛ անարգեր. հաստատէ Յքու ծառայիդ Դաւիթին ըրած ողորմութիւններդ յիշէ ։

ՂՍաղ. ճլբ. 8. 9. 10. 16. ՃԱՄն. իը. 2. ՃՆեեմ. Թ. 25. ՅՍաղ. ճլբ. 1. Ես. ծե. 3.

ԳԼ. Է

1 Աստուած երկինքէն կրակ իջնելով՝ Սողոմոնին աղօթքին ընդունելի ըլլալը կը յայտնէ, ու տաճարը փառքով կը լեցնէ. ժողովուրդն ալ Տէրոջը երկրպագութիւն կ'ընէ ։ 4 Սողոմոնին հանդիսաւոր զոհը ։ 8 Սողոմոն՝ տաղաւարահարաց տօնը ու սեղանին նաւակատեաց տօնը կատարելէն ետքը, ժողովուրդը կ'արձակէ ։ 12 Աստուած Սողոմոնին կ'երևնայ, ու պայմանով անոր խոստումներ կ'ընէ ։

1 Ու Աերբոր Սողոմոն իր աղօթքը լմնցուց, Բերկինքէն կրակ իջաւ, ու ողջակէզները և զոհերը սպառեց. ու ԳՏէրոջը փառքը
2 տունը լեցուց ։ ԴԵւ քահանաները չէին կրնար Տէրոջը տունը մտնել. քանզի Տէրոջը փառքը Տէրոջը
3 տունը լեցուցեր էր ։ Ու բոլոր Իսրայէլի որդիքը կրակին իջնելը՝ և տանը վրայ Տէրոջը փառքին հանգչիլը կը տեսնէին. ու երեսի վրայ գետինը իյնալով՝ քարայատակին վրայ երկրպագութիւն ըրին, ու Տէրը օրհնեցին, Եոր բարի է, Զոր անոր ողորմութիւնը յաւիտեան է ։
4 ԷԵւ թագաւորը ու բոլոր ժողովուրդը Տէրոջը առջևը զոհեր կը
5 մատուցանէին ։ Եւ Սողոմոն թագաւորը քսանուերկու հազար արջառ, ու հարիւր քսան հազար ոչխար զոհ ըրաւ. այսպէս թա-

Ա Գ Թագ. Ը. 54. Բ Ղև. Թ. 24. Դատ. Զ. 21. Գ Թագ. ԺԸ. 38. ԱՄն. Իա. 26. Գ Գ Թագ. Ը. 10. 11. Գլ. Ե. 13. 14. Եզեկ. Ժ. 3. 4. Դ Գլ. Ե. 14. Ե Գլ. Ե. 13. Սաղ. ճլզ. 1. Զ ԱՄն. Ժզ. 41. Գլ. Ի. 21. Է Գ Թագ. Ը. 62. 63.

գաւորը ու բոլոր ժողովուրդը Աստուծոյ տանը նաւակատիքը ըրին ։
6 ԸԵւ քահանաները իրենց պահպանութեանը համեմատ կը կայնէին, ու Ղևտացիները՝ Տէրոջը երգոց նուագարաններովը՝ որոնք Դաւիթ թագաւորը շիներ էր Տէրը գովելու համար, որ անոր ողորմութիւնը յաւիտեան է, *երբոր Դաւիթ անոնց ձեռքովը Տէրը օրհնեց". ու Թքահանաները անոնց դիմացը փողերը կը հնչեցնէին. ու բոլոր Իսրայէլը ոտքի վրայ կայներ էր ։
7 Եւ ԺՍողոմոն Տէրոջը տանը առջևը եղող գաւիթին մէջտեղը սրբեց. քանզի ողջակէզները ու խաղաղութեան զոհերուն ճարպերը հոն մատուց. որովհետև Սողոմոնին շինած պղնձէ սեղանը՝ ողջակէզները, ու հացի ընծաները ու ճարպերը չէր կրնար պարունակել ։
8 ԺԱԵւ անատենը Սողոմոն ու անոր հետ բոլոր Իսրայէլը՝ խիստ մեծ ժողով մը՝ Եմաթի մուտքէն մինչև ԺԲԵգիպտոսի հեղեղատը՝ եօթը օր
9 տօն ըրին ։ Եւ ութերորդ օրը մեծ ժողովք ըրին. քանզի եօթը օր սեղանին նաւակատիքը՝ ու եօթը օր
10 տօնը կատարեցին ։ Ու ԺԳեօթնեւորդ ամսուն քսանուիրեքերորդ օրը՝ ժողովուրդը արձակեց, որպէս զի իրենց վրանները դառնան, զուարթ սրտով մը ուրախանալով ան բարիքներուն համար՝ որ Տէրը Դաւիթին, Սողոմոնին, ու իր Իսրայէլ ժողովուրդին ըրեր էր ։
11 Եւ ԺԴՍողոմոն Տէրոջը տունը՝ ու թագաւորական տունը լմնցուց. ու Տէրոջը տանը մէջ, և իր տանը մէջ՝ Սողոմոնին սիրտը ինչ որ շինել ուզեց, ամէնն ալ յաջողեցաւ ։
12 Ու Տէրը գիշերով Սողոմոնին երևցաւ, և անոր ըսաւ. Քու աղօթքդ լսեցի, ԺԵու աս տեղս ընտրեցի, որ ինծի զոհի տուն ըլլայ ։
13 ԺԶԹէ որ երկինքը գոցեմ՝ որ անձրև չըլլայ, և թէ որ մարախին պատուիրեմ՝ որ երկիրը ուտէ, կամ թէ որ իմ ժողովուրդիս մէջը
14 ժանտախտ խրկեմ. Ու իմ անունովս կոչուած ժողովուրդս՝ ԺԷթէ որ խոնարհին, ու աղօթք ընեն, ու իմ երեսս խնդրեն, և իրենց չար ճամբաներէն դառնան, ԺԸես ալ երկինքէն պիտի լսեմ, ու անոնց մեղքը ներեմ, ու անոնց երկիրը
15 պիտի բժշկեմ ։ Հիմա ԺԹաս տեղս մատուցուելու աղօթքին՝ իմ աչքերս բաց՝ ու ականջներս մտիկ
16 ընող պիտի ըլլան ։ Եւ հիմա Իաս տունը ընտրեցի ու սրբեցի, որ իմ անունս յաւիտեան հոն ըլլայ. ու իմ

Ն. Ք. ԶՖ. 1004

Ը ԱՄն. Ժե. 16. * Կամ՝ Դաւիթին օրհնութիւնը իրենց ձեռքը ասելնալով. Թ Գլ. Ե. 12. Ժ Գ Թագ. Ը. 64. ԺԱ Գ Թագ. Ը. 65. ԺԲ Յես. ԺԳ. 3. ԺԳ Գ Թագ. Ը. 66. ԺԴ Գ Թագ. Թ. 1, &c. ԺԵ Օր. ԺԲ. 5. ԺԶ Գլ. Զ. 26. 28. ԺԷ Յակ. Դ. 10. ԺԸ Գլ. Զ. 27. 30. ԺԹ Գլ. Զ. 40. Ի Գ Թագ. Թ. 3. Գլ. Զ. 6.

Ն․ Ք․ Գ․ Ք․ 1004

յ Գ Թագ․ Թ․ 4, ևն ։

ն Գլ․ Զ․ 16 ։

հ Ղև․ Իզ․ 14․ 33 ։ Բ Օր․ Իը․ 15, 36, 37 ։

* Եբր․ զանոնք

† Եբր․ անոնց

ր Բ Օր․ ԻԹ․ 24 ։ Երեմ․ ԻԲ․ 8, 9 ։

աչքերս ու սիրտս ամէն ատեն հոն
17 պիտի ըլլայ ։ յԵւ թէ որ դուն իմ
առջևս՝ քու հօրդ Դաւիթին քա-
լածին պէս քալես , ու բոլոր քեզի
պատուիրածներս ընես , և իմ կա-
նոններս ու դատաստաններս պա-
18 հես , Ան ատենը քու թագաւորու-
թեանդ աթոռը պիտի հաստա-
տեմ , ինչպէս որ քու հօրդ Դաւի-
թին հետ ուխտ ըրի՝ ըսելով .
ն Քեզմէ Իսրայէլի վրայ իշխող
19 մարդ պակաս պիտի չըլլայ ։ հ Բայց
թէ որ դառնաք , ու ձեր առջևը
դրած կանոններս ու պատուիրանք-
ներս թողուք , ու երթաք ուրիշ
աստուածներու ծառայութիւն
ընէք , և անոնց երկրպագութիւն
20 ընէք , Ան ատենը * ձեզ արմատքի
պիտի խլեմ ան երկրին վրայէն՝ որն
որ † ձեզի տուի . և աս տունը՝ որ
իմ անուանս համար սրբեցի , ե-
րեսէս պիտի ձգեմ , ու զանիկայ
բոլոր ազգաց մէջ առակ ու կատակ
21 պիտի ընեմ ։ Եւ աս բարձր տա-
նը համար՝ ամէն քովէն անցնողը
պիտի զարմանայ , ու պիտի ըսէ .
ր Տէրը ինչո՞ւ համար աս երկրիս ու
22 աս տանս այսպէս ըրաւ ։ Եւ պիտի
ըսեն . Վասն զի իրենց հայրերուն
Տէր Աստուածը թողուցին , որ
զանոնք Եգիպտոսի երկրէն հաներ
էր , ու ուրիշ աստուածներու յա-
րեցան , և անոնց երկրպագութիւն
ու ծառայութիւն ըրին . աս պատ-
ճառով անոնց վրայ աս բոլոր չա-
րիքները բերաւ ։

---

## ԳԼ․ Ը

1 Սողոմոնին շինութիւնները ։ 7 Իսրայէլացւոց մէջ ողջ թողուած հեթանոսները՝ Սողոմոն հարկատու ծառաներ կ'ընէ , բայց Իսրայէլացիները իշխաններ կ'ընէ ։ 11 Փարաւոնին աղջիկը իր տունը կը փոխադրուի ։ 12 Սողոմոնին տարեկան հանդիսաւոր զոհերը ։ 14 Սողոմոն՝ քահանաները ու Ղևտացիները իրենց պաշտօններուն վրայ կը կեցընէ ։ 17 Նաւերը Ոփիրէն ոսկի կը բերեն ։

992

ա Գ Թագ․ Թ․ 10, ևն ։

բ Գ Թագ․ Թ․ 17, ևն ։

1 Եւ ա Սողոմոն Տէրոջը տունը ու իր
տունը քսան տարուան մէջ շի-
2 նելէն ետքը , Սողոմոն ան քաղաք-
ներն ալ շինեց , որոնք Քիրամ
Սողոմոնին տուեր էր , ու հոն Իս-
3 րայէլի որդիները բնակեցուց ։ Եւ
Սողոմոն Սուբայի Եմաթը գնաց ,
4 ու անոր տիրեց ։ բ Եւ անապատին
մէջ Թադմորը շինեց , ու ան բոլոր
շտեմարանի քաղաքները՝ որոնք Ե-
5 մաթի երկիրն մէջ շինեց . Ու վերի
Բեթորոնը և վարի Բեթորոնը՝
պարիսպներով , դռներով ու նի-
գերով ամրացած քաղաքներ շինեց .
6 Նաև Բաաղեթը , ու Սողոմոնին
բոլոր շտեմարանի քաղաքները , ու
կառքերուն բոլոր քաղաքները , ու

Ն․ Ք․ Գ․ Ք․ 992

գ Գ Թագ․ Թ․ 20, ևն ։

դ Տես Գ Թագ․ Թ․ 23 ։

ե Գ Թագ․ Գ․ 1 ։ Է․ Տ ։ Թ․ 24 ։

զ Ել․ ԻԹ․ 38 ։ Թուոց․ ԻԸ․ 3, 9, 11, 26 ։ ԻԹ․ 1, ևն ։

է Ել․ ԻԳ․ 14 ։ Բ Օր․ ԺԶ․ 16 ։

ը Ա Մն․ ԻԴ․ 1 ։

թ Ա Մն․ ԻԵ․ 1 ։

ժ Ա Մն․ Թ․ 17 ։ ԻԶ․ 1 ։

‡ Կամ՝ կարգաւորուած

ձիաւորներուն քաղաքները , և ան
բոլոր շէնքերը՝ որ Սողոմոն ուզեց
շինել Երուսաղէմի մէջ , Լիբանանի
մէջ , ու իր տէրութեանը բոլոր
երկրին մէջ ։
7 գ Ան բոլոր ժողովուրդները որ
Քետացիներէն , Ամօրհացիներէն ,
Փերեզացիներէն , Խևացիներէն ու
Յեբուսացիներէն մնացեր էին , և
8 Իսրայէլի որդւոցմէ չէին , Այսինքն
անոնց զաւակները՝ որ անոնցմէ ետ-
քը ան երկրին մէջ մնացեր էին ,
ու Իսրայէլի որդիքը զանոնք բոլո-
րովին կորսնցուցած չէին , Սողոմոն
զանոնք հարկատու ըրաւ մինչև
9 ցայսօր ։ Եւ Սողոմոն իր գործքին
համար՝ Իսրայէլի որդիներէն ծա-
ռաներ չըրաւ . հապա անոնք պա-
տերազմական մարդիկներ , ու իր
զօրավարներուն իշխանները , և իր
կառքերուն ու ձիաւորներուն վե-
10 րակացուներն էին ։ Եւ Սողոմոն
թագաւորին գլխաւոր իշխանները
դ երկու հարիւր յիսուն մարդիկ էին ,
որոնք ժողովուրդին վրայ կ'իշխէին ։
11 Ու Սողոմոն՝ ե Փարաւոնին աղջի-
կը Դաւիթի քաղաքէն՝ անոր հա-
մար շինած տունը հանեց . վասն զի
ըսաւ . Իմ կնիկս Իսրայէլի թագա-
ւորին՝ Դաւիթին տունը չնստի .
ինչու որ Տէրոջը տապանակին մը-
տած տեղուանքը սուրբ են ։
12 Ան ատենը Սողոմոն սրահին առ-
ջևը շինած Տէրոջը սեղանին վրայ՝
13 ողջակէզներ մատուց Տէրոջը ։ Եւ
Մովսէսին պատուիրածին համե-
մատ զ ամէն օրուան որոշուածը՝
շաբաթներու , ամսագլուխներու ,
ու հանդիսաւոր տօներուն մէջ՝
է տարին իրեք անգամ՝ այսինքն բա-
ղարջակերաց տօնին , շաբաթներու
տօնին , ու տաղաւարահարաց տօ-
14 նին կը մատուցանէր ։ Եւ իր հօրը
Դաւիթին կանոնովը՝ ը քահանա-
ներուն դասերը իրենց պաշտաման-
ցը վրայ , ու թ Ղևտացիները իրենց
պահպանութեանցը վրայ՝ ամէն օ-
րուան որոշուածին պէս՝ քահանա-
ներուն առջևը օրհնելու ու սպա-
սաւորութիւն ընելու համար , և
ժ դռնապաններն ալ իրենց դասե-
րուն կարգովը՝ ամէն մէկ դուռը
դրաւ . քանզի այսպէս էր Աստու-
ծոյ մարդուն Դաւիթին հրամանը ։
15 Ու քահանաներուն , ու Ղևտացինե-
րուն համար , և գանձարաններուն
համար՝ ամէն բանի մէջ թագաւո-
16 րին հրամանէն դուրս չելան ։ Ու
Սողոմոնին ամէն գործքը՝ Տէրոջը
տանը հիմը դրուած օրէն՝ մինչև
անոր լմննալը՝ ‡ պատրաստուած
էր ։ Այսպէս կատարուեցաւ Տէ-
րոջը տունը ։

Ն. ք. ՂՔ. 992

է Դ Թագ. Թ. 26 ։ ւբ Օր. ր. Տ ։ Դ Թագ. ԺԴ. 22 ։ ի գ Թագ. Թ. 27 ։ Գլ. Թ. 10, 13 ։

17 Ան ատենը Սողոմոն Եդովմի երկ-
րին մէջ՝ ծովեզերքը եղող Էգա-
սիոնգաբերը ու Եղլաթը գնաց ։
18 Եւ Է Քիրամ՝ իր ծառաներուն ձեռ-
քովը նաւեր՝ ու ծովու համբորդու-
թեան հմուտ եղող ծառաներ խրկեց
անոր . ու Սողոմոնին ծառաներուն
հետ Ոփիր գացին , և անկէ չորս
հարիւր քսան տաղանդ ոսկի ա-
ռին , ու Սողոմոն Թագաւորին բե-
րին ։

ԳԼ. Թ

1 Սաբայի Թագուհին՝ Սողոմոնին իմաստու-
թեանը վրայ կը զմայլի ։ 13 Սողոմոնին ոս-
կին . 15 անոր վահանները 17 անոր փղոս-
կրեայ աթոռը . 20 անոր ամանները . 23 անոր
բերուած ընծաները . 25 անոր կառքերը ու
ձիերը . 29 անոր Թագաւորութեանը օրերը
ու մահը ։

Իսր 992
ա գ Թագ. Ժ. 1, Թ ։ Մատ. ԺԲ. 42 ։ Ղու. ԺԱ. 31 ։

1 Եւ ա Սաբայի Թագուհին Սողոմո-
նին համբաւը լսեց , ու Սողոմոնը
խրթին հարցմունքներով փորձելու
համար Երուսաղէմ եկաւ խիստ
շատ զօրքով , և խունկեր , ու շատ
ոսկի , և պատուական քարեր բեռ-
ցած ուղտերով . և Սողոմոնին քո-
վը գնաց , ու բոլոր իր սրտին մէջը
եղածին վրայով անոր հետ խօսե-
2 ցաւ ։ Եւ Սողոմոն անոր բոլոր
հարցմունքները բացատրեց . ու
բնաւ անանկ մէկ խօսք մը չկար ,
որ Սողոմոն չհասկնայ ու չբա-
3 ցատրէ անոր ։ Եւ Սաբայի Թա-
գուհին՝ Սողոմոնին իմաստութիւ-
4 նը , ու անոր շինած տունը , Եւ
անոր սեղանին կերակուրները , ու
անոր ծառաներուն * բնակարան-
ները , և սպասաւորներուն կայ-
նուածքը , ու անոնց հագուստ-
ները , և անոր մատռուակները ,
ու անոնց հագուստները , ու Տէ-
րոջը տունը ելլելու սանդուխը տես-
5 նելով , խելքը գլխէն գնաց . Եւ
Թագաւորին ըսաւ . Քու վիճակիդ
ու իմաստութեանդ վրայով իմ
երկրիս մէջ լսած խօսքերս ճշմա-
6 րիտ էին եղեր . Բայց ես ան խօսքե-
րուն չհաւատացի , մինչև որ անձամբ
եկայ , ու իմ աչքերովս տեսայ . և
ահա քու իմաստութեանդ շատու-
թեանը կէսը ինծի չպատմուեցաւ .
դուն գերազանց ես քու համբաւէդ՝
7 որ ես լսեցի ։ Երանի քու մար-
դիկներուդ՝ ու երանի աս քու ծա-
ռաներուդ՝ որոնք միշտ քու առջևդ
կայնելով քու իմաստութիւնդ կը
8 լսեն ։ Քու Եհովայ Աստուածդ
օրհնեալ ըլլայ , որ քեզի հաւնեցաւ ,
ու քեզ իր աթոռին վրայ դրաւ ,
որ քու Տէր Աստուծոյդ համար
Թագաւոր ըլլաս . քու Աստուածդ՝
Իսրայէլը սիրելուն համար՝ ու զա-
նիկայ յաւիտեան հաստատելու հա-
մար , քեզ անոնց վրայ Թագաւոր
դրաւ , որ իրաւունք ու արդարու-
9 թիւն ընես ։ Եւ Թագաւորին՝ հա-
րիւր քսան տաղանդ ոսկի , ու խիստ
շատ խունկեր , և պատուական
քարեր տուաւ . ու Սաբայի Թա-
գուհիին՝ Սողոմոն Թագաւորին
տուած խունկերուն պէս չկար ։
10 Եւ Քիրամին ծառաները ու Սո-
ղոմոնին ծառաները՝ բ որոնք Ոփի-
րէն ոսկի կը բերէին , գ ալմուկ
փայտեր ու պատուական քարեր ալ
11 բերին ։ Եւ Թագաւորը ալմուկ
փայտէն՝ Տէրոջը տանը ու Թագա-
ւորական տանը աստիճաններ , ու
երգեցողներուն համար՝ քնարներ
ու տաւիղներ շինեց . և անոնց պէս
անկէ առաջ Յուդայի երկրին մէջը
չէր երևցած ։
12 Ու Սողոմոն Թագաւորը Սաբայի
Թագուհիին բոլոր ուզած ու խնդ-
րած բաները տուաւ , ան բաներէն
'ի զատ՝ որ անիկայ Թագաւորին
բերաւ . և անիկայ իր ծառաներուն
հետ դարձաւ իր երկիրը գնաց ։
13 Ու մէկ տարուան մէջ Սողոմոնին
եկած ոսկիին կշիռքը՝ վեց հարիւր
վաթսունըվեց տաղանդ ոսկի էր ,
14 Առուտուր ընողներուն , ու վաճա-
ռականներուն , և Արաբացւոց բո-
լոր Թագաւորներուն , ու երկրին
Նախարարներուն՝ Սողոմոնին բե-
րած ոսկիէն ու արծաթէն 'ի զատ ։
15 Եւ Սողոմոն Թագաւորը կռածոյ
ոսկիէ երկու հարիւր վահան շինեց .
ու ամէն մէկ վահանին համար վեց
հարիւր սիկղ կռածոյ ոսկի գնաց ։
16 Կռածոյ ոսկիէ իրեք հարիւր ասպար
ալ շինեց . ու ամէն մէկ ասպարին
իրեք հարիւր սիկղ ոսկի գնաց . ու
Թագաւորը Լիբանանի անտառին
տունը դրաւ զանոնք ։
17 Եւ Թագաւորը փղոսկրէ մեծ ա-
թոռ մը շինեց , ու զանիկայ մա-
18 քուր ոսկիով պատեց ։ Եւ աթո-
ռը վեց աստիճան , ու ոսկիէ պա-
տուանդան մը ունէր , որոնք աթո-
ռին կից էին . և նստելու տեղը մէկ
կողմէն ու մէկալ կողմէն յենարան-
ներ ունէր , ու յենարաններուն քո-
վը երկու առիւծներ կը կայնէին ։
19 Եւ հոն վեց աստիճաններուն վրայ՝
մէկ կողմէն ու մէկալ կողմէն տա-
սուերկու առիւծներ կը կայնէին .
բնաւ մէկ Թագաւորութեան մէջ
ասանկ բան մը շինուած չէր ։
20 Ու Սողոմոն Թագաւորին բոլոր
խմելիքի ամանները ոսկի էին . և
Լիբանանի անտառին տանը բոլոր
ամանները զուտ ոսկի էին . արծա-
թէ չկար . ինչու որ անիկայ Սողո-
մոնին օրերը բանի մը տեղ չէր սե-
21 պուեր ։ Քանզի Թագաւորին նա-

* կամ՝ ժո-ղովը ։

Ն. ք. ՂՔ. Իսր 992

բ Գլ. Ը. 18 ։ գ Բ Թագ. Ժ. 11 ։

Ն. Ք. Գ. Բ. Էր 992

ւերը Փիրամին ծառաներուն հետ
Թարսիս կ'երթային . Թարսիսի
նաւերը իրեք տարին անգամ մը
ոսկիով , արծաթով , փղոսկրով ,
կապիկներով ու սիրամարգներով
բեռնաւորուած կու գային ։
22 Եւ Սողոմոն թագաւորը հարըս-
տութեան ու իմաստութեան կող-
մանէ՝ երկրիս բոլոր թագաւորնե-
23 րէն մեծ եղաւ ։ Ու երկրի բոլոր
թագաւորները կը փափաքէին Սո-
ղոմոնին երեսը տեսնելու , և անոր
իմաստութիւնը լսելու , որն որ Աս-
տուած անոր սրտին մէջը դրեր էր ։
24 Ու անոնց ամէնը տարուէ տարի ի-
րենց ընծաները կը բերէին , այսինքն՝
արծաթէ ամաններ , ոսկիէ աման-
ներ , հանդերձներ , զէնքեր , խուն-
կեր , ձիեր ու ջորիներ ։

Դ Գ Թագ. Դ. 26 ։ Ժ. 26 ։ Գլ. Ա. 14 ։

25 Եւ Սողոմոն Դ ձիերու ու կառքե-
րու համար չորս հազար ախոռ ունէր ,
ու տասուերկու հազար ձիաւոր , ու
զանոնք կառքերու քաղաքներուն
մէջը ու Երուսաղէմի մէջ՝ թագա-
26 ւորին քովը տեղաւորեց ։ Ու Ե Եփ-
րատ գետէն մինչև Փղշտացւոց եր-
կիրը՝ ու մինչև Եգիպտոսի սահմա-
նը՝ Զ բոլոր թագաւորներուն վրայ
27 կ'իշխէր ։ Է Եւ թագաւորը Երու-
սաղէմի մէջ՝ արծաթը քարերու
պէս հասարակ բան մը ըրաւ , ու ե-
ղեւնափայտը շատութենէն՝ դաշտի
մէջ եղող մոլաթզենիներուն պէս
28 ըրաւ ։ Ը Եւ Սողոմոնին համար՝
Եգիպտոսէն ու ամէն երկիրներէն
ձիեր կը հանէին ։

Ե Ծն. ԺԵ. 18 ։ Սաղ. Հբ. 8 ։
Զ Գ Թագ. Դ. 21 ։
Է Գ Թագ. Ժ. 27 ։ Գլ. Ա. 15 ։
Ը Գ Թագ. Ժ. 28 ։ Գլ. Ա. 16 ։

29 Թ Եւ Սողոմոնին առաջին ու վեր-
ջին պատմութեանը մնացորդը՝
Նաթան մարգարէին գրքին մէջը ,
ու Ժ Սիլոնացի Աքիային մարգարէ-
ութեանը մէջ , և Ի Ադդով տեսա-
նողին՝ Նաբատեան Յերոբովամին
վրայով գրած տեսիլքներուն մէջը
30 գրուած են ։ Լ Ու Սողոմոն բոլոր
Իսրայէլին վրայ՝ Երուսաղէմի մէջ
քառասուն տարի թագաւորութիւն
31 ըրաւ ։ Եւ Սողոմոն իր հայրերուն
հետ քնացաւ , ու զանիկայ իր հօրը
Դաւիթին քաղաքին մէջը թաղե-
ցին . և անոր տեղը՝ անոր որդին
Ռոբովամը թագաւոր եղաւ ։

Թ Գ Թագ. ԺԱ. 41 ։
Ժ Գ Թագ. ԺԱ. 29 ։
Ի Գլ. ԺԲ. 15 ։ ԺԳ. 22 ։
Լ Գ Թագ. ԺԱ. 42 , 43 ։

975

## ԳԼ. Ժ

1 Իսրայէլացիք Ռոբովամը թագաւոր ընելու համար Սիւքեմի մէջ ժողվուելով՝ Յերոբովամին միջոցովը անկէ կը խնդրեն որ իրենց վրայ դրուած լուծը թեթեւցրնէ ։ 6 Ռոբովամ ծերերուն խրատը մերժելով՝ իր սննդակից պատանիներուն տուած խորհուրդին համեմատ՝ խստութեամբ կը պատասխանէ անոնց ։ 16 Տասը ցեղերը կ'ապստամբին ու Ադորամը կը մեռցնեն . ասոր վրայ Ռոբովամ կը փախչի ։

Ա Գ Թագ. ԺԲ. 1 , Ա ։

1 Եւ Ա Ռոբովամ Սիւքէմ գնաց .
վասն զի բոլոր Իսրայէլը զանի-
կայ թագաւոր ընելու համար Սիւ-
2 քէմ գացեր էր ։ Ու Նաբատեան
Յերոբովամը՝ որ Բ Սողոմոն թա-
գաւորին երեսէն փախած՝ Եգիպ-
տոս կը բնակէր , աս բանը լսելով
3 Եգիպտոսէն դարձաւ ։ Եւ մարդ
ղրկելով՝ զանիկայ կանչեցին . ու
Յերոբովամը և բոլոր Իսրայէլը ե-
կան , ու Ռոբովամին հետ խօսեցան
4 ու ըսին . Քու հայրդ մեր վրայ
ծանր լուծ մը դրաւ . ու հիմա քու
հօրդ խիստ ծառայութիւնը , ու
մեր վրայ դրած ծանր լուծը թե-
թեւցո՛ւր , ու քեզի ծառայութիւն
5 ընենք ։ Եւ անիկայ ըսաւ անոնց .
Իրեք օրէն ետքը ինծի դարձէք . ու
ժողովուրդը գնաց ։
6 Եւ Ռոբովամ թագաւորը խոր-
հուրդ հարցուց այն ծերերուն՝ որ
իր հօրը Սողոմոնին առջեւը կը կայ-
նէին երբոր անիկայ ողջ էր , ու ը-
սաւ . Դուք ինծի ի՞նչ խորհուրդ
կու տաք , որ աս ժողովուրդին պա-
7 տասխան տամ ։ Եւ անոր խօսեցան
ու ըսին . Թէ որ աս ժողովուրդին
հետ քաղցրութեամբ վարուիս , ու
անոնց հաճելի ըլլաս , ու անոնց
բարի խօսքեր զրուցես , այն ատենը
անոնք միշտ քեզի ծառայ կ'ըլլան ։
8 Բայց անիկայ ծերերուն իրեն տուած
խորհուրդը մերժեց , ու իր առջեւը
կայնող ու իր հետը մեծցած երի-
տասարդներուն խորհուրդ հար-
9 ցուց . Եւ անոնց ըսաւ . Դուք ի՞նչ
խորհուրդ կու տաք , որ աս ժողո-
վուրդին պատասխան տամ . քանզի
անոնք ինծի խօսեցան , ու ըսին .
Քու հօրդ մեր վրայ դրած լուծը
10 թեթեւցո՛ւր ։ Ու անոր հետ մեծ-
ցած երիտասարդները անոր խօսե-
ցան ու ըսին . Քու հայրդ մեր լու-
ծը ծանրացուց , ու դուն մե՛ր վրա-
յէն թեթեւցո՛ւր՝ ըսող ժողովուր-
դին այսպէս խօսիս , ու անոնց
այսպէս ըսես . Իմ պզտիկ մատս՝
11 իմ հօրս մէջքէն հաստ է . Եւ հիմա
իմ հայրս ձեր վրայ ծանր լուծ դրեր
է , բայց ես ձեր լուծը աւելի պիտի
ծանրացընեմ . իմ հայրս ձեզ խա-
րազաններով խրատեր է , բայց ես
ձեզ կարիճներով պիտի խրատեմ ։
12 Եւ Յերոբովամ ու բոլոր ժողո-
վուրդը երրորդ օրը Ռոբովամին ե-
կան , ինչպէս որ թագաւորը ըսեր
էր թէ՝ Երրորդ օրը ինծի դարձէք ։
13 Ու թագաւորը անոնց խստու-
թեամբ պատասխան տուաւ . և
Ռոբովամ թագաւորը ծերերուն
14 խորհուրդը մերժելով , Երիտա-
սարդներուն խորհուրդին պէս ա-
նոնց հետ խօսեցաւ , ու ըսաւ . Իմ
հայրս ձեր լուծը ծանրացուցեր
է , բայց ես զանիկայ աւելի պիտի

Ն. Ք. Գ. Բ. Էր 975

Բ Գ Թագ. ԺԱ. 40 ։

Ն. ք. զՔ. տեր 975

ծանրացընեմ . իմ հայրս ձեզ
խարազաններով խրատեր է, բայց
ես կարիճներով պիտի խրա-
15 տեմ : Եւ թագաւորը ժողովուր-
դին խօսքը մտիկ չըրաւ . վասն զի
աս բանը Աստուծմէ եղաւ, որ Տէ-
րը Սիլօնացի Աքիային ձեռքովը՝
Նաբատեան Յերոբովամին ըսած
խօսքը հաստատէ :

(Գ Թագ. ԺԲ. 15. 24: Գ Թագ. ԺԱ. 29:)

16 Ու երբոր բոլոր Իսրայէլը տե-
սաւ, որ թագաւորը իրենց մտիկ
չըրաւ, ժողովուրդն ալ թագաւո-
րին պատասխան տուին ու ըսին .
Մենք Դաւիթին քովը ի՞նչ բաժին
ունինք . ու Յեսսէի որդւոյն քովը
ժառանգութիւն չունինք . ով Իս-
րայէլ՝ թող ամէն մարդ իր վրանը
դառնայ . ով Դաւիթ՝ հիմա դուն
քու տունդ հոգա . ու բոլոր Իս-
րայէլը իրենց վրանները գացին :
17 Բայց Յուդայի քաղաքներուն մէջ
* բնակող Իսրայէլի որդւոցը վրայ՝
18 Ռոբովամը թագաւոր եղաւ : Եւ
Ռոբովամ թագաւորը երբոր հար-
կերուն վրայ եղող Ադորամը խըր-
կեց, Իսրայէլի որդիքը զանիկայ
քարերով քարկոծեցին, ու մե-
ռաւ : Եւ Ռոբովամ թագաւորը
արտորալով կառքը հեծաւ, որ
19 Երուսաղէմ փախչի : Այսպէս
Իսրայէլը Դաւիթի տունէն ապըս-
տամբեցաւ մինչև աս օրս :

(Գ Թագ. ԺԲ. 19:)

## ԳԼ. ԺԱ

1 Ռոբովամ զօրք կը ժողվէ Իսրայէլը հնազանդեցընելու համար, բայց Սեմայիայէն կ'արգիլուի : 5 Իր թագաւորութիւնը կը զօրացընէ պարիսպներ շինելով ու պաշարներ ժողվելով : 13 Քահանաները ու Ղևտացիները, և անոնք որ Աստուծմէ կը վախնային՝ Յերոբովամէն մերժուելով, կ'երթան Յուդայի թագաւորութիւնը կը զօրացընեն : 18 Ռոբովամին կնիկները ու որդիները :

1 Եւ Ռոբովամ Երուսաղէմ ե-
կաւ, ու Յուդայի ու Բենիամի-
նի տունէն հարիւր ութսուն հա-
զար ընտիր պատերազմողներ ժող-
վեց, որ Իսրայէլի հետ պատերազմ
ընեն, ու թագաւորութիւնը Ռո-
2 բովամին դարձընեն : Բայց Աս-
տուծոյ մարդուն Սեմայիային՝ Տէ-
3 րոջը խօսքը եղաւ՝ ըսելով . Սողո-
մոնի որդւոյն Յուդայի Ռոբովամ
թագաւորին, ու Յուդայի ու Բե-
նիամինի մէջ եղող բոլոր Իսրայէ-
4 լացիներուն խօսէ, ու ըսէ . Տէրը
այսպէս կ'ըսէ . Մի՛ ելլէք, ու ձեր
եղբայրներուն հետ մի՛ պատերազ-
միք . ամէն մարդ թող իր տունը
դառնայ . վասն զի աս բանը ինծմէ
եղաւ : Եւ Տէրոջը խօսքը մտիկ
ըրին, ու Յերոբովամին վրայ եր-
թալէն ետ կեցան :
5 Եւ Ռոբովամ Երուսաղէմ բնա-
կեցաւ . ու Յուդայի մէջ պարըս-

(Գ Թագ. ԺԲ. 21. ԺԳ: Բ Մն. ԺԲ. 15:)

Ն. ք. զՔ. տեր 975

6 պաւոր քաղաքներ շինեց : Բեթ-
7 լէհէմը, Ետամը, Թեկուէն, Բեթ-
8 սուրը, Սոքովը, Ոդողամը, Գեթը,
9 Մարեսան, Զիփը, Ադորայիմը,
10 Լաքիսը, Ազեկան, Սարաան, Այե-
ղոնը ու Քեբրոնը շինեց, որոնք
Յուդայի ու Բենիամինի մէջ պարըս-
11 պաւոր քաղաքներ էին : Եւ պա-
րիսպները ամրացուց, ու անոնց
մէջ զօրապետներ, և կերակուրի,
ու եղի, ու գինիի շտեմարաններ,
12 Ու ամէն մէկ քաղաքին մէջ վա-
հաններ ու նիզակներ դրաւ . և
զանոնք խիստ շատ ամրացուց . ու
Յուդան ու Բենիամինը անոր հպա-
տակ էին :
13 Եւ բոլոր Իսրայէլի մէջ եղող 974
քահանաները ու Ղևտացիները՝ ի-
րենց բոլոր սահմաններէն անոր քո-
14 վը ժողվուեցան . (Քանզի Ղևտա-
ցիք իրենց արուարձանները ու
կալուածքները թողուցին, և Յու-
դայի երկիրը ու Երուսաղէմ գացին .
վասն զի Յերոբովամ ու անոր
որդիքը՝ զանոնք Տէրոջը քահանա-
15 յութենէն մերժեցին . Եւ անիկայ
բարձր տեղերուն համար, ու դի-
ւաց համար, ու իր շինած զոր-
թերուն համար իրեն քուրմեր
16 դրաւ :) Եւ անոնց ետևէն՝ Իս-
րայէլի բոլոր ցեղերէն՝ Իսրայէլի
Տէր Աստուածը «սրտանց փնտռող-
ները» իրենց հայրերուն Տէր Աս-
տուծոյն զոհ ընելու համար Երու-
17 սաղէմ կ'երթային : Ու Յուդայի
թագաւորութիւնը զօրացուցին,
և Սողոմոնին որդին Ռոբովամը ի-
րեք տարուան մէջ ուժովցուցին .
քանզի իրեք տարի Դաւիթին ու
Սողոմոնին ճամբովը քալեցին :
18 Եւ Ռոբովամ՝ Դաւիթի որդւոյն
Յերիմովթին աղջիկը Մահելեթը
իրեն կնիկ առաւ . նաև Յեսսէի
որդւոյն Եղիաբին աղջիկը Աբիքէլը .
19 Ու անիկայ որդիներ ծնաւ անոր .
Յեուսը, Սամարիան ու Զաամը :
20 Եւ անկէ ետքը Աբիսողոմին աղջիկը
Մաաքան առաւ, որ անոր ծնաւ
Աբիան, Եթթին, Զիզան ու Սա-
21 ղոմիթը : Եւ Ռոբովամ՝ Աբիսո-
ղոմին աղջիկը Մաաքան իր բոլոր
կնիկներէն ու հարճերէն աւելի կը
սիրէր . (վասն զի անիկայ տասնու-
ութը կնիկ՝ ու վաթսուն հարճ ա-
ռեր էր . և քսանութը տղայ ու
22 վաթսուն աղջիկ ծնաւ .) Եւ Ռո-
բովամ՝ Մաաքայի որդին Աբիան
գլուխ դրաւ, առաջնորդ իր եղբայրնե-
րուն վրայ իշխան . քանզի զանիկայ
23 թագաւոր ընելու միտք ունէր : Ու
խելացութիւն ընելով՝ իր բոլոր
տղաքները՝ բոլոր Յուդայի ու Բե-
նիամինի գաւառներուն մէջ՝ բոլոր

(Գ Թուոց. ԼԵ. 2: Բ Մն. ԺԳ. 9: Բ Մն. ԺԷ. 7. Ա Կոր. Ժ. 20: Գ Թագ. ԺԲ. 28: ԺԳ. 9: Ովս. ԺԳ. 2: Գ Թագ. ԺԲ. 31. ԺԳ. 33: Բ Տեր. ԺԲ. 9. Լ. 11. 18:)

* Եբր. փնտռելու համար իրենց սիրտը տուողները

(Բ Մն. ԺԲ. 1: Գ Թագ. ԺԵ. 2: Բ Մն. ԺԳ. 2 ... Միքայիա՝ Ուրիէլին աղջիկը: Բ Տեր Օր. ԻԱ. 15. 16. 17:)

Ն․ Ք․ ԴՓ․ 974

* Եբր․ Յըրուեց․

պարսպաւոր քաղաքներուն մէջ
*տեղաւորեց, և անոնց առատապ-
րուստ կու տար․ ու շատ կնիկներ
փնտռեց։

## ԳԼ․ ԺԲ

1 Ռոբովամ՝ Տէրը թող տալուն համար՝ Սիսա-
կին միջոցով կը պատժուի։ 5 Ռոբովամ ու
իշխանները՝ Սեմայիային քարոզութեամբը
դարձի գալով, կործանումէ ազատ կը մնան,
բայց կը կողոպտուին։ 13 Ռոբովամին թա-
գաւորութեանը օրերը ու մահը։

972

ա Գլ․ ԺԱ․ 17․
բ Գ Թագ․ ԺԴ․ 22, 23, 24․
գ Գ Թագ․ ԺԴ․ 24, 25․

971

դ Գլ․ ԺԶ․ Տ․
† Կամ՝ Տըրոգլոդացիք․
ե Գլ․ ԺԱ․ 2․
զ Գլ․ ԺԵ․ 2․
է Յակ․ Դ․ 10․
ը Եւ․ Թ․ 27․
թ Գ Թագ․ ԻԱ․ 28, 29․
ժ Տես Ես․ ԻԶ․ 13․
ի Օր․ ԻԸ․ 47, 48․
լ Գ Թագ․ ԺԴ․ 25, 26․
խ Գ Թագ․ Ժ․ 16, 17․ Գլ․ Թ․ 15, 16․
ծ Տես Բ Թագ․ Ը․ 18․

1 Ու ᵃերբոր Ռոբովամին թագաւո-
րութիւնը հաստատուեցաւ, ու
ինքը զօրացաւ, ᵇՏէրոջը օրէնքը
թողուց․ ու անոր հետ բոլոր Իս-
րայէլն ալ։
2 ᶜԵւ Ռոբովամ թագաւորին հին-
գերորդ տարին՝ Եգիպտոսի Սիսակ
թագաւորը Երուսաղէմի վրայ ե-
լաւ․ (քանզի Տէրոջը դէմ ապըս-
3 տամբութիւն ըրեր էին․) Անհամար
հազար երկու հարիւր կառքով, ու
վաթսուն հազար ձիաւորով ելաւ․
ու անոր հետ Եգիպտոսէն եկած
ժողովուրդը անթիւ էր, այսինքն
ᵈԼիբէացիք, †Սուկիացիք, ու Ե-
4 թէովպացիք․ Եւ Յուդային պա-
րըսպաւոր քաղաքները առաւ, ու
5 մինչև Երուսաղէմ եկաւ։ Եւ ᵉՍե-
մայիա մարգարէն եկաւ Ռոբովամին
ու Յուդայի իշխաններուն՝ որոնք
Սիսակին երեսէն Երուսաղէմ ժող-
վուեր էին, ու անոնց ըսաւ․ Տէրը
այսպէս կ'ըսէ․ ᶠԴուք զիս թողու-
ցիք, ու ես ալ ձեզ Սիսակին ձեռ-
6 քը կը թողում։ Եւ Իսրայէլի
իշխանները ու թագաւորը ᵍխոնար-
հեցան՝ ու ըսին․ ʰՏէրը արդար է։
7 Ու երբոր Տէրը անոնց խոնարհիլը
տեսաւ, ⁱՏէրոջը խօսքը Սեմայիա-
յին եղաւ՝ ըսելով․ Անոնք խոնար-
հեցան, պիտի չկորսնցընեմ զա-
նոնք․ հապա անոնց քիչ մը ազա-
տութիւն պիտի տամ․ ու իմ
բարկութիւնս Սիսակին ձեռքովը
Երուսաղէմի վրայ պիտի չթափի․
8 Սակայն ʲանոր ծառաներ պիտի
ըլլան, որ ᵏիմ ծառայութեանս՝
ու երկրի թագաւորներուն ծառա-
յութեանը տարբերութիւնը գիտ-
9 նան։ ˡՈւ Եգիպտոսի Սիսակ թա-
գաւորը Երուսաղէմի վրայ ելաւ, և
Տէրոջը տանը գանձերը՝ ու թագա-
ւորին տանը գանձերը առաւ․ ա-
մէնն ալ առաւ․ Սողոմոնին ᵐշինած
10 ոսկիէ ասպարներն ալ առաւ։ Եւ
Ռոբովամ թագաւորը անոնց տեղը
պղնձէ ասպարներ շինեց, ու զա-
նոնք՝ թագաւորական տանը դուռը
պահպանութիւն ընող ⁿսուրհան-
դակաց ստորկաններուն ձեռքը
11 յանձնեց։ Ու երբոր թագաւորը
Տէրոջը տունը կ'երթար, սուրհան-
դակները կու գային զանոնք կը
կրէին, ու ետքը զանոնք սուրհան-
դակներուն խուցը կը դարձընէին։
12 Ուստի անոր խոնարհելուն համար
Տէրոջը բարկութիւնը անկէ դար-
ձաւ, ու զանիկա բոլորովին չկորսըն-
ցուց․ ᵒՆաև Յուդայի մէջ աղէկ
բաներ կային։
13 Եւ Ռոբովամ թագաւորը Երու-
սաղէմի մէջ զօրացաւ, ու թագա-
ւորութիւն ըրաւ․ ու ᵖերբոր Ռո-
բովամ թագաւորեց, քառասունու-
մէկ տարեկան էր, ու տասնուեօթը
տարի թագաւորութիւն ըրաւ Ե-
րուսաղէմի մէջ, այսինքն ᑫայն քա-
ղաքին մէջ՝ որն որ Տէրը Իսրայէլի
ամէն ցեղերէն ընտրեց՝ իր անունը
հոն դնելու համար․ ու անոր մայրը
Ամմոնացի էր Նաամա անունով։
14 Եւ անիկայ չարութիւն ըրաւ․
քանզի իր սիրտը չուղղեց որ Տէրը
15 փնտռէ։ Ու Ռոբովամին առաջին
ու վերջին գործքերը՝ ահա Սեմայիա
մարգարէին գրքին մէջ՝ ʳու Աղ-
դով տեսանողին ազգաբանութեա-
նը մէջ գրուած են։ ˢԵւ Ռոբո-
վամին ու Յերոբովամին մէջտեղը
16 միշտ պատերազմ կար։ Ու Ռոբո-
վամ իր հայրերուն հետ քնացաւ,
և Դաւիթի քաղաքին մէջը թա-
ղուեցաւ․ ու անոր տեղը՝ ᵗանոր
որդին Աբիան թագաւոր եղաւ։

Ն․ Ք․ ԴՓ․ 971

կ Տես Ծն․ ԺԸ․ 24․ Գ Թագ․ ԺԴ․ 13․ Գլ․ ԺԹ․ 3․
հ Գ Թագ․ ԺԴ․ 21․
ձ Գլ․ Զ․ 6․
ղ Գլ․ Թ․ 29․ ԺԴ․ 22․
ճ Գ Թագ․ ԺԴ․ 30․
մ Գ Թագ․ ԺԴ․ 31․

## ԳԼ․ ԺԳ

1 Աբիա՝ Ռոբովամին տեղը անցնելով, Յերոբո-
վամին դէմ պատերազմ կ'ընէ․ 4 իր փաստին
իրաւացի ըլլալը կը յայտնէ․ 13 ու Աստուծոյ
ապաւինելով՝ Յերոբովամը կը յաղթէ։ 21 Ա-
բիային կնիկները ու որդիները։

958

ա Գ Թագ․ ԺԵ․ 1, 2․
բ Տես Գլ․ ԺԱ․ 20․

957

գ Յես․ ԺԸ․ 22․
դ Բ Թագ․ Է․ 12, 13, 16․

1 ᵃՅերոբովամ թագաւորին տաս-
նուութերորդ տարին՝ Յուդայի
2 վրայ Աբիան թագաւորեց։ Անի-
կայ Երուսաղէմի մէջ իրեք տարի
թագաւորութիւն ըրաւ․ և անոր
մօրը անունը ᵇՄիքայիա էր, ու
Գաբաացի Ուրիելին աղջիկն էր․
և Աբիային ու Յերոբովամին մէջ-
3 տեղը պատերազմ կար։ Եւ Աբիա
զօրաւոր ու պատերազմող զօրքե-
րով՝ չորս հարիւր հազար ըն-
տիր մարդիկներով պատերազմելու
պատրաստուեցաւ․ Յերոբովամն
ալ անոր դիմացը ելաւ՝ ութը հա-
րիւր հազար ընտիր՝ զօրաւոր ու
պատերազմող մարդիկներով։
4 Եւ Աբիա՝ Եփրեմի լեռնակողմը
ᶜՍեմարիմ լեռանը վրայ կայնեցաւ՝
ու ըսաւ․ Ո՛վ Յերոբովամ ու բո-
լոր Իսրայէլ՝ ինծի մտիկ ըրէք․
5 Դուք գիտնալու չէ՞ք որ Իսրայէլի
Տէր Աստուածը ᵈԻսրայէլի վրայ
թագաւորելը՝ յաւիտեան Դաւի-
թին ու անոր որդւոցը տուած է

Ն · ք · ԴՔ · 957

6 [ա] աղի ուխտով ։ Եւ Դաւիթի որ-
դւոյն Սողոմոնին ծառան՝ Նաբա-
տեան Յերոբովամը ոտք ելաւ, ու
7 [բ] իր տիրոջմէն ապստամբեցաւ ․ Եւ
անոր քովը [գ] դատարկակեաց ու ա-
նօրէն մարդիկներ ժողվուեցան, ու
Սողոմոնին որդւոյն Ռոբովամին
դէմ կեցան ․ քանզի Ռոբովամ
մանկահասակ ու փափկասիրտ ըլ-
8 լով՝ անոնց դէմ չդրաւ ։ Եւ հիմա
դուք շատուոր ըլլալնուդ համար,
ու Յերոբովամին [դ] ձեզի շինած աս-
տուածները՝ ան ոսկիէ որթերը ձեր
քովը ըլլալուն համար, Դաւիթին
որդւոցը ձեռքը եղող Տէրոջը թա-
գաւորութեանը դէմ կենալ կը մը-
9 տածէք ։ [ե] Միթէ դուք Տէրոջը
քահանաները՝ Ահարոնի որդիները՝
ու Ղեւտացիները դուրս չըրի՞ք, և
օտար երկիրներուն ժողովրդոցը
պէս ձեզի քուրմեր չըրի՞ք ան բոլոր
մարդիկները, [զ] որոնք մէկ զուարա-
կով ու եօթը խոյերով կու գային
[է] զիրենք նուիրելու, որ չաստուած-
10 ներու քուրմ ըլլան ։ Բայց մեր
Աստուածը Եհովան է, ու մենք
զանիկայ չթողուցինք ․ և Տէրոջը
ծառայութիւն ընող քահանաները
Ահարոնի որդիքն են ․ ու Ղեւտա-
ցիները իրենց պաշտօնին վրայ են ․
11 [ը] Եւ ամէն առտու ու ամէն իրիկուն
Տէրոջը ողջակէզներ կը մատուցանեն,
ու անուշահոտ խունկ կը ծխեն,
[թ] ու մաքուր սեղանին վրայ առա-
ջաւորութեան հացերը կը շարեն, [ժ] և
ամէն իրիկուն վառելու համար՝
ոսկիէ աշտանակը ու անոր ճրագ-
ները կը պատրաստեն ․ քանզի մենք
մեր Տէր Աստուծոյն պահպանու-
թիւնը կը պահենք ․ բայց դուք
12 զանիկայ մերժեցիք ։ Եւ ահա Աս-
տուած ինքը մեր հետն է՝ մեր իշ-
խանը ըլլալու ․ [ի] նաև անոր քահա-
նաները ազդարարութեան փողե-
րով, որ ձեզի դէմ փչեցընեն ․
ուրեմն ով Իսրայէլի որդիք, [լ] ձեր
հայրերուն Տէր Աստուծոյն հետ մի՛
պատերազմիք ․ քանզի դուք յա-
ջողութիւն պիտի չգտնէք ։
13 Բայց Յերոբովամ դարանակալ-
ները դարձուց, որ անոնց ետեւէն
գան ․ ու Իսրայէլացիք Յուդայեանց
առջեւն էին, ու դարանակալները
14 անոնց ետեւն էին ։ Եւ Յուդա-
յեանք դարձան նայեցան որ պա-
տերազմը իրենց առջեւէն ու ետեւէն
էր, ու Տէրոջը աղաղակեցին, և
քահանաները փողերը փչեցուցին ․
15 Ու Յուդայի մարդիկը աղաղակ վեր-
ցուցին ․ ու երբոր Յուդայի մար-
դիկը աղաղակեցին, Աստուած՝
[խ] Յերոբովամը ու բոլոր Իսրայէլը
Աբիային ու Յուդային առջեւը

ա Թու · ԺԸ · 19 ։
բ Գ Թագ · ԺԱ · 26 ։ ԺԲ · 20 ։
գ Դատ · Թ · 4 ։
դ Գ Թագ · ԺԲ · 28 ։ ԺԴ · 9 ։ Ովս · Ը · 6 ։
ե Գլ · ԺԱ · 14, 15 ։
զ Ել · ԻԹ · 35 ։
է Տես Ել · ԻԹ · 1 ։ Ղև · Ը · 2 ։
ը Գլ · Բ · 4 ։
թ Ղև · ԻԴ · 6 ։
ժ Ել · ԻԵ · 20, 21 ։ Ղև · ԻԴ · 2, 3 ։
ի Թու · Ժ · 8 ։
լ Գործ · Ե · 39 ։
խ Գլ · ԺԶ · 12 ։

16 զարկաւ ։ Եւ Իսրայէլի որդիքը
Յուդային առջեւէն փախան ․ ու
Աստուած անոնց ձեռքը մատնեց
17 զանոնք ։ Եւ Աբիա ու իր զօրքը
մեծ կոտորած ըրին անոնց մէջը ․
ու Իսրայէլէն հինգ հարիւր հազար
ընտիր մարդիկ վիրաւորուած ին-
18 կան ։ Ան ատենը Իսրայէլի որդիքը
նուաճեցան, ու Յուդայի որդիքը
[ա] իրենց հայրերուն Տէր Աստուծոյն
ապաւինելնուն համար ույժ գտան ։
19 Եւ Աբիա Յերոբովամը հալածեց,
ու անկէ քաղաքներ առաւ, այս-
ինքն Բեթէլը ու անոր գեղերը,
և Յեսանան ու անոր գեղերը, ու
20 [բ] Եփրոնը ու անոր գեղերը ։ Եւ
Յերոբովամ՝ Աբիային օրերուն
մէջը մէյմըն ալ չկրցաւ ույժ գըտ-
նել ․ ու Տէրը [գ] զանիկայ զարկաւ,
ու [դ] մեռաւ ։
21 Եւ Աբիա ուժովցաւ, ու իրեն
տասնուչորս կնիկ առաւ ․ և քսան-
ուերկու տղայ ու տասնուվեց աղ-
22 ջիկ ծնաւ ։ Ու Աբիային մնացորդ
պատմութիւնը, և անոր գործքերը
ու խօսքերը՝ [ե] Ադդով մարգարէին
յիշատակարանին մէջը գրուած է ։

Ն · ք · ԴՔ · 957
ա Ա Մն · Ե · 20 ։ Սաղ · ԻԲ · 5 ։
բ Յես · ԺԵ · 9 ։
գ Ա Թագ · ԻԵ · 38 ։
դ Գ Թագ · ԺԴ · 20 ։
ե Գլ · ԺԲ · 15 ։

## ԳԼ · ԺԴ

1 Ասա՝ Աբիային տեղը յաջորդելով՝ կռապաշտութիւնը կը վերցընէ ․ 6 ու խաղաղութիւն ունենալով՝ իր թագաւորութիւնը կը զօրացընէ բերդերով ու զօրքերով ։ 9 Ասա՝ Աստուծոյ աղաղակելով՝ Զարային կը յաղթէ, ու Եթէովպացիներէն խիստ շատ աւար կ՚առնէ ։

955

1 Ու Աբիա իր հայրերուն հետ քնա-
ցաւ, ու զանիկայ Դաւիթի
քաղաքին մէջը թաղեցին ․ և անոր
տեղը՝ անոր որդին [ա] Ասա թագաւոր
եղաւ ․ ասոր օրերը՝ երկիրը տասը
2 տարի հանգստութիւն գտաւ ։ Ու
Ասա իր Տէր Աստուծոյն առջեւը
3 բարի և ուղիղ եղածը ըրաւ ․ Ու
օտար աստուածներուն սեղանները,
ու [բ] բարձր տեղերը վերցուց, և [գ] ար-
ձանները կոտրտեց, [դ] ու Աստարով-
թի կուռքերը կտոր կտոր ըրաւ ․
4 Եւ Յուդային հրամայեց որ իրենց
հայրերուն Տէր Աստուածը փընտ-
ռեն, ու օրէնքը ու պատուիրանք-
5 ները կատարեն ։ Եւ Յուդային ա-
մէն քաղաքներէն բարձր տեղուան-
քը, ու արեգական կուռքերը վեր-
ցուց ․ ու իր առջեւը թագաւորու-
6 թիւնը հանգիստ էր ։ Եւ անիկայ
Յուդայի մէջ պարսպաւոր քաղաք-
ներ շինեց ․ քանզի ան տարիներուն
մէջ երկիրը հանգստութիւն կը
վայելէր, ու անոր հետ պատերազմ
ընող չկար ․ վասն զի Տէրը անոր
7 հանգստութիւն տուաւ ։ Եւ Ասա
Յուդային ըսաւ ․ Աս երկիրը քանի
որ մեր * իշխանութեանը տակն է",
աս քաղաքները շինենք, ու զանոնք

ա Գ Թագ · ԺԵ · 8, &c ։
Իբր 951
բ Տես Գ Թագ · ԺԵ · 14 ։ Գլ · ԺԵ · 17 ։
գ Ել · ԼԴ · 13 ։
941
դ Գ Թագ · ԺԱ · 7 ։
* Եբր · առջեւն է ։

Ն. Ք. Ջ.Ք. ԻՐ 951

պարիսպներով՝ աշտարակներով՝
դռներով ու նիգերով շրջապա-
տենք. քանզի մենք մեր Տէր Ա-
տուածը փնտռեցինք, ու փնտռե-
նուս համար՝ ամէն կողմանէ մեզի
հանգստութիւն տուաւ։ Եւ շի-
նեցին, ու յաջողութիւն
8 գտան։ Եւ Ասա՝ Յուդայէն վա-
հան ու նիզակ կրող իրեք հարիւր
հազար զօրք, ու Բենիամինէն՝ աս-
պար կրող ու աղեղ քաշող երկու
հարիւր ութսուն հազար զօրք ու-
նէր. ասոնք ամէնը զօրաւոր կըտ-
րիճներ էին։

Ի Գլ. ԺԶ. Տ. 941

9 Ու Եթէովպացի Զարան հազար
անգամ հազար զօրքով ու իրեք
հարիւր կառքով անոնց վրայ ելաւ,

Կ Յեսո. ԺԵ. 44.

10 ու մինչև Մարեսա եկաւ։ Եւ Ասա
անոր դիմացը ելաւ. ու Մարեսայի
Սեփաթա ձորին մէջ պատերազմի

Ի Եւ. ԺԴ. 10. Գլ. ԺԳ. 14. Սաղ. ԻԲ. 5.
Ը Ա Թագ. ԺԴ. 6.
* Եբր. ուժ-կարով

11 շարուեցան։ Եւ Ասա իր Տէր Ա-
տուծոյն աղաղակեց, ու ըսաւ.
Ո՛վ Տէր՝ քու առջեւդ տարբերու-
թիւն մը չկայ թէ շատով և թէ
*քիչով օգնութիւն ընելու մէջ.
մեզի օգնութիւն ըրէ՝ ով Տէր Ա-
տուած մեր, որովհետև քեզի ա-
պաւինեցանք, ու քու բազմու-

Բ Ա Թագ. ԺԷ. 45.
Առակ. ԺԸ. 10.

թեանս վրայ քու անունովդ եկանք.
ով Տէր, մեր Աստուածը դուն ես.
մի՛ թողուր որ մարդը քեզի դէմ

Ժ Գլ. ԺԳ. 15.

12 զօրանայ։ Եւ Տէրը Եթէովպա-
ցիները Ասային ու Յուդային առ-
ջեւը զարկաւ. ու Եթէովպացիք
13 փախան։ Եւ Ասա ու անոր հետ
եղող ժողովուրդը՝ զանոնք մինչև

Ի Ծն. Ժ. 19. Ի. 1.

Գերարա հալածեցին. ու Եթէով-
պացիք ինկան, և անոնց վրայ կեն-
դանութիւն չմնաց. քանզի Տէրոջը
առջեւը ու անոր բանակին առջեւը
խորտակեցան. ու խիստ շատ ա-
14 ւար առին։ Եւ Գերարային բո-
լորտիքը եղող ամէն քաղաքները

Լ Ծն. ԼԵ. 5. Գլ. ԺԷ. 10.

զարկին. քանզի անոնց վրայ Տէ-
րոջը վախը ինկաւ. ու ամէն քա-
ղաքները կողոպտեցին. վասն զի
15 անոնց մէջը շատ աւար կար։ Եւ

† Եբ՝ հովիւ-ներուն

հօտերուն վրաններն ալ զարկին,
ու խիստ շատ ոչխար և ուղտ առին,
ու Երուսաղէմ դարձան։

ԳԼ. ԺԵ

1 Ասա՝ Յուդային հետ ու Իսրայէլէն պանդուխտ եղողներուն հետ Ազարիա մարգարէին խօսքերէն քաջալերուելով՝ Աստուծոյ հետ հանդիսաւոր ուխտ մը կ'ընէ. 16 իր մայրը Մաաքան տիկնութենէ կը հանէ՝ անոր կռապաշտութեանը համար. 18 ու նուիրուած բաները Աստուծոյ տունը կը տանի, ու երկար ժամանակ խաղաղութիւն կը վայելէ։

Ա Թու. ԻԴ. 2. Դատ. Գ. 10. Գլ. Ի. 14. ԻԴ. 20.

1 Ու Ովդեդի որդւոյն Ազարիային
վրայ Աստուծոյ Հոգին եկաւ.
2 Եւ Ասային առջեւը ելլելով՝ ըսաւ
անոր. Ո՛վ Ասա, ու բոլոր Յու-
դա ու Բենիամին, ինծի մտիկ ը-
րէք. Տէրը ձեզի հետ կ'ըլլայ.

Ն. Ք. Ջ.Ք. 941

Բ Յակ. Դ. Տ. Գ Հմր 4. 15. Ա Մն. ԻԸ. 9. Գլ. ԼԴ. 12. 13. Երեմ. ԻԹ. 13. Մատ. Է. 7.
Դ Գլ. ԻԴ. 20.
Ե Ովս. Գ. 4.
Զ Ղև. Ժ. 11.
Է Բ Օր. Դ. 29.
Ը Դատ. Ե. 6.

քանի որ դուք անոր հետ էք. ու
եթէ որ զանիկայ փնտռէք, զանի-
կայ կը գտնէք. բայց եթէ որ զանի-
կայ թողուք, անիկայ ալ ձեզ պիտի
3 թողու։ Եւ Իսրայէլը երկար ժա-
մանակ առանց ճշմարիտ Աստու-
ծոյ, առանց սորվեցընող քահա-
նայի, ու առանց օրէնքի մնացեր
4 էր. Բայց իրենց նեղութեանը
մէջ՝ Իսրայէլի Տէր Աստուծոյն դար-
ձան, ու զանիկայ փնտռելով՝ գը-
5 տան։ Եւ այն ատենները ելլողին
ու մտնողին ապահովութիւն չկար.
քանզի երկիրներուն բոլոր բնակ-
չացը մէջ շատ խռովութիւններ

Թ Մատ. ԻԴ. 7.

6 կար. Եւ ազգ ազգի հետ, ու
քաղաք քաղաքի հետ կը զար-
նուէր. ինչու որ Աստուած ամէն
նեղութիւններով զարհուրեցուց
7 զանոնք։ Եւ հիմա դուք զօրա-
ցէք, ու ձեռքերնիդ չթուլնայ.
վասն զի ձեր գործքին վարձքը կայ։

‡ Ըստ Լատ. և Ասոր. Բարգ. Ովդեդի որդւոյն Ազարիա
Ժ Գլ. ԺԳ. 19.

8 Եւ Ասա աս խօսքերը՝ ու Ովդեդ
մարգարէին մարգարէութիւնը լսե-
լով՝ զօրացաւ, և Յուդայի ու Բե-
նիամինի բոլոր երկրէն, ու Եփրե-
մի լեռնէն իր առած քաղաքներէն
պղծութիւնները վերցուց, ու Տէ-
րոջը տաճարին սրահին առջեւը եղող
9 Տէրոջը սեղանը նորոգեց. Եւ բոլոր

Ի Գլ. ԺԱ. 16.

Յուդան ու Բենիամինը, ու Եփ-
րեմէն և Մանասէէն ու Շմաւոնէն
անոնց քովը գտնուած պանդուխտ-
ները ժողվեց. քանզի Իսրայէլէն
շատ մարդիկ անոր կողմը անցան,
տեսնելով որ անոր Տէր Աստուածը
10 անոր հետն է։ Եւ անոնք՝ Ասային
թագաւորութեանը տասնուհին-
գերորդ տարւոյն երրորդ ամիսը Ե-

Լ Գլ. ԺԴ. 15.
Խ Գլ. ԺԴ. 13.

11 րուսաղէմի մէջ ժողվուեցան. Ու
ան օրը իրենց բերած աւարէն
Տէրոջը զոհ ըրին. եօթը հարիւր
արջառ ու եօթը հազար ոչխար.

Ծ Դ Թագ. ԻԴ. 3. Գլ. ԼԴ. 31. Նեեմ. Ժ. 29.
Կ Եւ. ԻԲ. 20.

12 Եւ ուխտ ըրին որ իրենց հայրե-
րուն Տէր Աստուածը բոլոր սրտով
13 ու բոլոր հոգիով խնդրեն. Եւ
ով որ Իսրայէլին Տէր Աստուածը
չփնտռէ, թէ պզտիկ և թէ մեծ,
թէ էրիկ մարդ և թէ կնիկ ըլլայ՝

Հ Բ Օր. ԺԳ. 5. 9. 15.

14 մեռցուի։ Ու մեծ ձայնով, և
ցնծութեամբ, ու փողերով, ու
եղջիւրներով՝ Տէրոջը երդում ըրին։
15 Եւ բոլոր Յուդան այն երդումին
վրայ ուրախացաւ. քանզի իրենց
բոլոր սրտովը երդում ըրին, ու

Ձ Հմր 2.

իրենց բոլոր կամքովը խնդրելով՝
գտան զանիկայ. ու Տէրը ամէն
կողմանէ հանգստացուց զանոնք։

‖ Եբ՝ մեծ մայրը. տես Գ Թագ. ԺԵ. 2. 10.
Ղ Գ Թագ. ԺԵ. 13.

16 Եւ Ասա թագաւորը իր ‖ մայրը
Մաաքան ալ տիկնութենէ հա-
նեց. վասն զի անիկայ Աստարով-

Ն. Ք. Ծ.
941

թին կուռք շինեն էր . իսկ Ասա
անոր կուռքը կոտրեց ու փշրեց ,
ու Կեդրոն հեղեղատին մէջը այրեց ։
17 Բայց բարձր տեղուանքը Իսրայէ-
լէն չվերցան . սակայն Ասային սիր-
տը իր կենացը բոլոր օրերուն մէջ՝
18 ուղիղ էր ։ Եւ իր հօրը նուիրած
ու իր նուիրած բաները՝ արծաթը ,
ու ոսկին , ու անօթները՝ Աստու-
19 ծոյ տունը տարաւ ։ Ու մինչև Ա-
սային թագաւորութեանը երսուն-
նուհինգերորդ տարին՝ պատերազմ
չեղաւ ։

Գ Թագ. ԺԴ. 3, 5 ։ Գ Թագ. ԺԵ. 14, Ա ։

## ԳԼ. ԺԶ

1 Ասա՝ Ասորիներուն օգնութեամբը՝ Ռաման շինելէն կը դադրեցնէ Բաասան ։ 7 Աս բանիս վրայով Անանիէն յանդիմանութիւն լսելուն համար՝ բանտը կը դնէ զանիկայ ։ 12 Ասա իր հիւանդութեան ատենը՝ Աստուծմէ օգնութիւն չփնտռեր , հապա բժիշկներէն ։ 13 Անոր մահը ու թաղումը ։

940
Որ է տասը ցեղերուն Յուդայէն բաժնուելէն հետև . որուն վրայ Ասա թագաւորէր աս ատենը ։
Գ Թագ. ԺԵ. 17, Ա ։
Բ Գլ. ԺԵ. 9 ։

1 Ասային թագաւորութեանը եր-
սուն ու վեցերորդ տարին Իսրա-
յէլի Բաասա թագաւորը Յուդայի
դէմ ելաւ , ու Ռաման շինեց , որ
Յուդայի Ասա թագաւորին ելող
2 մտնող մարդ մը չթողու ։ Եւ Ասա
Տէրոջը տանը ու թագաւորին տա-
նը գանձերէն արծաթ ու ոսկի հա-
նեց , ու Դամասկոս բնակող Ասո-
րւոց թագաւորին՝ Բենադադին
3 խրկեց՝ ըսելով . Իմ ու քու մէջդ ,
և իմ հօրս ու քու հօրդ մէջը դաշ-
նակցութիւն կայ . ահա քեզի ար-
ծաթ ու ոսկի կը խրկեմ . Եկուր ,
Իսրայէլի Բաասա թագաւորին հետ
ունեցած դաշնակցութիւնդ աւրէ ,
որ անիկայ իմ վրայէս ետ քաշուի ։
4 Ու Բենադադ Ասա թագաւորին
խօսքը մտիկ ըրաւ . և իր զօրա-
գլուխները Իսրայէլի քաղաքներուն
վրայ խրկեց . ու Իյոնը , Դանը ,
Աբէլմայիմը , ու Նեփթաղիմի բո-
լոր շտեմարանի քաղաքները զար-
5 կին ։ Եւ Բաասա աս բանը լսե-
լով՝ Ռաման շինելէն ետ կեցաւ , ու
6 գործը դադրեցուց ։ Ուստի Ասա
թագաւորը բոլոր Յուդան առաւ ,
ու Բաասային շինած Ռամայի քա-
րերը ու փայտերը վերցուցին . ու
անոնցմով Գաբան ու Մասփան շի-
նեց ։

941
Գ Թագ. ԺԶ. 1 ։ Գլ. ԺԹ. 2 ։
Ես. Լա. 1 ։ Երեմ. ԺԷ. 5 ։

7 Եւ այն ատենը Անանի տեսանողը
Յուդայի Ասա թագաւորին եկաւ ,
ու անոր ըսաւ . Որովհետև դուն
Ասորւոց թագաւորին ապաւինե-
ցար , ու քու Տէր Աստուծոյդ չա-
պաւինեցար , անոր համար Ասո-
րւոց թագաւորին զօրքը քու ձեռ-
8 քէդ ազատեցաւ ։ Միթէ Եթէ-
ովպացիք ու Ղիբէացիք խիստ
շատ կառքերով ու ձիաւորներով՝
բազմաթիւ զօրք չէի՞ն . բայց ո-

Ե Գլ. ԺԴ. 9 ։
Դ Գլ. ԺԲ. 3 ։

րովհետև դուն Տէրոջը ապաւինե-
ցար , զանոնք քու ձեռքդ մատ-
9 նեց . Քանզի Տէրոջը աչքերը բո-
լոր երկիրը կը դիտեն , որ իրեն ու-
ղիղ սրտով յարողները ուժովցը-
նէ . Դուն աս բանիս մէջ տղի-
տութիւն ըրիր . ասկէ ետքը պա-
10 տերազմներ պիտի ունենաս ։ Եւ
Ասա այն տեսանողին բարկացաւ ,
ու զանիկայ բանտը դրաւ . վասն
զի աս բանիս համար խիստ բար-
կացաւ անոր . ու այն ատենը Ասա
ժողովուրդէն մէկ քանիները հա-
րստահարեց ։
11 Եւ Ասային առաջին ու վերջին
պատմութիւնը՝ ահա Յուդայի ու
Իսրայէլի թագաւորներուն գրքին
12 մէջը գրուած է ։ Եւ Ասա իր թա-
գաւորութեանը երսուն ու իններորդ
տարին՝ ոտքի ցաւով հիւանդացաւ .
ու անոր հիւանդութիւնը ծանրա-
ցաւ . և իր հիւանդութեանը մէջն
ալ Տէրը չփնտռեց , հապա բժիշկ-
13 ները փնտռեց ։ Եւ Ասա իր հայ-
րերուն հետ քնացաւ . ու անիկայ
իր թագաւորութեանը քառասուն-
14 ումէկերորդ տարին մեռաւ ։ Ու
զանիկայ Դաւիթի քաղաքին մէ-
ջը՝ իրեն համար փորած գերեզմա-
նը թաղեցին . և զանիկայ խունկե-
րով ու իւղագործի արուեստին
զանազան բաղադրութիւններովը
լեցուն անկողինի մը մէջ պառկե-
ցուցին , ու անոր վրայ խիստ շատ
խունկեր ծխեցին ։

Ն. Ք. Ծ.
941
Յոբ. ԼԴ. 21 ։ Առակ. Ե. 21 ։ ԺԵ. 3 ։ Երեմ. ԺԶ. 17 ։ ԼԲ. 19 ։ Զաք. Դ. 10 ։
Գ Թագ. ԺԴ. 13 ։
Գ Թագ. ԺԵ. 32 ։
Ա Գլ. ԺԲ. 26 ։ Երեմ. Ի. 2 ։ Մատ. ԺԴ. 3 ։
Գ Թագ. ԺԵ. 23 ։
Երեմ. ԺԷ. 5 ։
914
Գ Թագ. ԺԵ. 24 ։
Ծնն. Ծ. 2 ։ Մար. ԺԶ. 1 ։ Յով. ԺԹ. 39, 40 ։
Գլ. ԻԱ. 19 ։ Երեմ. ԼԴ. 5 ։

## ԳԼ. ԺԷ

1 Յովսափատ՝ Ասային տեղը յաջորդելով՝ աղէկ կերպով կը կառավարէ ու յաջողութիւն կը գտնէ ։ 7 Ղևտացիներ ու իշխաններ կը խրկէ , որ Աստուծոյ օրէնքը Յուդային սորվեցնեն ։ 10 Աստուծոյ վախը Յովսափատին թշնամիներուն վրայ ըլլալով՝ անոնցմէ ոմանք անոր ընծաներ կը բերեն ու հարկ կու տան ։ 12 Անոր մեծութիւնը , պաշտօնատարները ու զօրքերը ։

1 Եւ անոր տեղը՝ անոր որդին
Յովսափատը թագաւոր ե-
ղաւ , ու Իսրայէլի դէմ զօրացաւ ։
2 Եւ Յուդային ամէն պարսպաւոր
քաղաքներուն մէջը զօրքեր դրաւ .
ու Յուդայի երկրին մէջը՝ ու անոր
հօրը Ասային առած Եփրեմի
քաղաքներուն մէջը բերդապահ
3 զօրքեր դրաւ ։ Եւ Տէրը Յովսա-
փատին հետն էր . քանզի անիկայ
իր հօրը Դաւիթին առջի ճամբա-
ներուն մէջը քալեց , ու Բահաղիմը
4 չփնտռեց , Հապա իր հօրը Աս-
տուածը փնտռեց , անոր պա-
տուիրանքներուն մէջը քալելով , և
ոչ թէ Իսրայէլին ըրածին պէս
5 ընելով ։ Եւ Տէրը թագաւորու-
թիւնը անոր ձեռքին մէջը հաս-

Գ Թագ. ԺԵ. 24 ։
Բ Գլ. ԺԵ. Տ ։
Գ Թագ. ԺԲ. 28 ։

Ն. Ք. Գ. Բ.
914

Գ Թագ. Ժ. 27 ; Գ Թագ. Ժ. 25 ;

913

Ե Գ Թագ. Ժ. 27 ; Գլ. ԺԲ. 1 ;

912

Ղ Գ Թագ. Իբ. 43 ; Գլ. ԺԵ. 17 ; ԺԹ. 3 ; Ի. 33 ;

Ե Գլ. ԺԵ. 3 ;

Է Գլ. ԼԵ. 3 ; Նեեմ. Ը. 7 ;

Ր Ծն. ԼԵ. 5 ;

Ժ Բ Թագ. Ը. 2 ;

Ի Դատ. Ե. 2, 9 ;

Լ Հմր 2 ;

տատեց . ու բոլոր Յուդան Յով-
սափատին ընծաներ կու տար . Եւ
անոր հարստութիւնը ու փառքը
6 շատցաւ . Ու անոր սիրտը Տէրոջը
ճամբաներուն մէջը բարձրացաւ .
և Ղանիկայ բարձր տեղերը՝ ու Ա-
տարովթի կուռքերն ալ Յուդայէն
վերցուց ։
7 Եւ իր թագաւորութեանը եր-
րորդ տարին՝ իր իշխանները՝ Բեն-
հայիլը , Աբդիան , Զաքարիան ,
Նաթանայէլը ու Միքիան խրկեց ,
Է որ Յուդայի քաղաքներուն մէջը
8 սորվեցընեն . Եւ անոնց հետ էին
Սեմայիա , Նաթանիա , Զաբա-
դիա , Ասայէլ , Սեմիրամովթ ,
Յովնաթան , Ադոնիա , Տուբիա ու
Տոբադոնիա Ղեւտացիները . Նաև
անոնց հետ Եղիսամա ու Յովրամ
9 քահանաները . Է Ու Յուդայի մէջ
կը սորվեցընէին , ու Տէրոջը օրի-
նաց գիրքը անոնց հետն էր , և
Յուդային ամէն քաղաքները կը
պտըտէին , ու ժողովուրդին կը
սորվեցընէին ։
10 Եւ Յուդայի բոլորտիքը եղող
երկիրներուն բոլոր թագաւորու-
թիւններուն վրայ Ր Տէրոջը վախը
ինկաւ , ու Յովսափատին հետ
11 պատերազմ չըրին ։ Եւ Փղշտա-
ցիներէն ալ Ժ Յովսափատին ընծա-
ներ ու հարկի ստակ կը բերէին .
և Արաբացիներն ալ՝ հօտերէն եօ-
թը հազար եօթը հարիւր խոյ , ու
եօթը հազար եօթը հարիւր նո-
12 խազ կը բերէին անոր ։ Եւ Յով-
սափատ երթալով խիստ մեծցաւ ,
ու Յուդայի մէջ բերդեր , ու շտե-
13 մարանի քաղաքներ շինեց ։ Եւ
անիկայ Յուդայի քաղաքներուն
մէջ շատ գործքեր ունէր , ու Ե-
րուսաղէմի մէջ զօրաւոր կտրիճներ
ու պատերազմող մարդիկներ ու-
14 նէր ։ Եւ ասոնք էր անոնց թիւը ի-
րենց ազգատոհմներուն համեմատ .
Յուդայի հազարապետները՝ Եդնա
իշխան , ու անոր հետ իրեք հարիւր
15 հազար զօրաւոր կտրիճներ . Եւ
անկէ ետքը՝ Յօհանան իշխան , ու
անոր հետ երկու հարիւր ութսուն
16 հազար մարդիկ . Եւ անկէ ետքը՝
Զեքրիի որդին Ամասիան , Ի որ Տէ-
րոջը ուխտաւորն էր , ու անոր հետ
երկու հարիւր հազար զօրաւոր
17 կտրիճներ . Ու Բենիամինէն՝ զօրա-
ւոր կտրիճ Եղիադան , և անոր հետ
երկու հարիւր հազար աղեղնաւոր
18 ու ասպարաւոր մարդիկ . Եւ անկէ
ետքը՝ Յովզաբադ , ու անոր հետ
հարիւր ութսուն հազար սպառա-
19 զինեալ մարդիկ ։ Ասոնք էին թա-
գաւորին ծառայութիւն ընողները ,
բաց ՚ի Լ այն մարդիկներէն՝ որոնք

թագաւորը բոլոր Յուդային պա-
րըսպաւոր քաղաքներուն մէջը դը-
րաւ ։

## ԳԼ. ԺԸ

1 Յովսափատ՝ Աքաաբին հետ խնամութիւն ունենալով , անոր հետ Ռամովթ գաղաադի վրայ պատերազմի երթալու կը համոզուի ։ 4 Աքաաբ՝ սուտ մարգարէներէն խաբուելով՝ պատերազմին մէջ կը սպաննուի՝ Միքիային բանին համեմատ ։

1 Եւ Յովսափատ Ա խիստ շատ հա-
րըստութիւն ու փառք ու-
նեցաւ . և Բ Աքաաբին հետ խնա-
2 մութիւն ըրաւ ։ Գ Ու մէկ քա-
նի տարիէն ետքը Սամարիա ի-
ջաւ Աքաաբին . և Աքաաբ անոր՝
ու անոր հետ եղող ժողովուր-
դին խիստ շատ ոչխարներ ու
արջառներ մորթեց , ու զանիկայ
համոզեց որ Ռամովթ գաղաա-
3 դը ելլէ ։ Եւ Իսրայէլի Աքաաբ
թագաւորը Յուդայի Յովսափատ
թագաւորին ըսաւ . Ինծի հետ
Ռամովթ գաղաադը կ'երթա՞ս . ու
անիկայ անոր ըսաւ . Ես քեզի պէս
եմ , ու իմ ժողովուրդս քու ժո-
ղովուրդիդ պէս է . ու քեզի հետ
պատերազմի կ'երթանք ։
4 Եւ Յովսափատ Իսրայէլի թա-
գաւորին ըսաւ . Հիմա Դ Տէրոջը
5 խօսքը փնտռէ ։ Ու Իսրայէլի
թագաւորը մարգարէները ժողվեց ,
որոնք չորս հարիւր հոգի էին , ու ա-
նոնց ըսաւ . Ռամովթ գաղաադի
վրայ պատերազմելու երթա՞նք ,
թէ ետ կենամ . ու անոնք ըսին .
Գնա . վասն զի Աստուած զանիկայ
թագաւորին ձեռքը պիտի տայ ։
6 Եւ Յովսափատ ըսաւ . Աստեղս
Տէրոջը ուրիշ մարգարէ մըն ալ
7 չկա՞յ . որ անոր հարցընենք ։ Ու
Իսրայէլի թագաւորը Յովսափա-
տին ըսաւ . Կայ մէկ ուրիշ մարդ
մըն ալ , որուն միջոցովը կրնանք
Տէրոջը հարցընել . բայց ես զանի-
կայ կ'ատեմ . քանզի ինծի համար
աղէկ մարգարէութիւն չըներ , հա-
պա միշտ գէշ . անիկայ Յեմլայի որ-
դին Միքիան է ։ Եւ Յովսափատ ը-
սաւ . Թագաւորը այդպէս չըրուցէ ։
8 Ու Իսրայէլի թագաւորը ներքի-
նի մը կանչեց , ու ըսաւ . Յեմլայի
որդին Միքիան շուտով հոս բեր ։
9 Եւ Իսրայէլի թագաւորը ու Յու-
դայի Յովսափատ թագաւորը՝ Սա-
մարիայի դրանը առջևի հրապարա-
կին մէջ՝ ամէն մէկը թագաւորական
զգեստներ հագած՝ իր աթոռին
վրայ նստեր էր . ու բոլոր մարգա-
րէները անոնց առջևը մարգարէու-
10 թիւն կ'ընէին ։ Եւ Քանանայի
որդին Սեդեկիան իրեն երկաթէ
եղջիւրներ շինեց , ու ըսաւ . Տէրը

Ն. Ք. Գ. Բ.
912

897

Ա Գլ. ԺԷ. 5 ;

Բ Դ Թագ. Ը. 18 ;

Գ Գ Թագ. Իբ. 2, Ա ;

Դ Գ Թագ. Իգ. 2, 4, 9 ; Բ Թագ. Բ. 1 ;

Ն. Ք. ԴՃ. 897

այսպէս կ՚ըսէ . Ասորիները առնց-
մով պիտի զարնես , մինչև որ զա-
11 նոնք բնաջինջ ընես ։ Բոլոր մար-
գարէներն ալ այնպէս կը մարգա-
րէանային ու կ՚ըսէին . Ռամովթ
գաղաադը ելի՛ր , ու յաջողութիւն
պիտի ունենաս , և Տէրը զանիկայ
թագաւորին ձեռքը պիտի տայ ։
12 Ու Միքիան կանչելու գացող
մարդը խօսեցաւ անոր՝ ըսելով .
Ահա ահա մարգարէները մէկ բեր-
նով թագաւորին համար բարու-
թիւն խօսեցան . թող քու խօսքդ
ալ անոնց մէկուն խօսքին պէս ըլ-
13 լայ , ու բարութիւն խօսէ ։ Իսկ
Միքիա ըսաւ . Տէրը կենդանի է
որ՝ է իմ Աստուածս ինծի ինչ որ
ըսէ , ան պիտի խօսիմ ։
14 Ու երբոր անիկայ թագաւորին
եկաւ , թագաւորը անոր ըսաւ . Ո՛վ
Միքիա՝ Ռամովթ գաղաադը պա-
տերազմելու երթա՞նք , թէ ետ կե-
նամ ։ Եւ անիկայ ըսաւ . Ելէ՛ք ,
ու յաջողութիւն պիտի ունենաք .
15 ու ձեր ձեռքը պիտի տրուին ։ Եւ
թագաւորը անոր ըսաւ . Մինչև
քանի՞ անգամ երդմնցընեմ քեզ ,
որ Տէրոջը անունովը ճշմարիտը
16 միայն խօսիս ինծի ։ Ու անիկայ
ըսաւ . Բոլոր Իսրայէլը հովիւ չու-
նեցող ոչխարներու պէս՝ լեռներու
վրայ ցրուած տեսայ . և Տէրը ը-
սաւ . Ասոնք տէր չունին . ամէն
մարդ խաղաղութեամբ թող իր
17 տունը դառնայ ։ Եւ Իսրայէլի
թագաւորը՝ Յովսափատին ըսաւ .
Քեզի չըսի՞ որ անիկայ ինծի համար
աղէկ մարգարէութիւն չըներ , հա-
18 պա գէշ ։ Ու Միքիա ըսաւ . Ու-
րեմն Տէրոջը խօսքը մտիկ ըրէք .
Տէրը իր աթոռին վրայ նստած տե-
սայ . ու երկինքի բոլոր զօրքերը
անոր աջ կողմը ու ձախ կողմը կայ-
19 ներ էին . Եւ Տէրը ըսաւ . Իսրայէ-
լի Աքաաբ թագաւորը ո՞վ կրնայ
խաբել , որ Ռամովթ գաղաադը
ելլէ ու կորսուի . և մէկը այսպէս՝
20 ու մէկալը այնպէս ըսաւ ։ Ու մէկ
Հոգի մը ելաւ , և Տէրոջը առջևը
կայնեցաւ , ու ըսաւ . Ջանիկայ
ես կը խաբեմ ։ Եւ Տէրը անոր ը-
21 սաւ . Ի՞նչ միջոցով ։ Ու անիկայ
ըսաւ . Ելլեմ , ու անոր բոլոր մար-
գարէներուն բերանը սուտ ոգի ըլ-
լամ . և Տէրը անոր ըսաւ . Դուն
պիտի խաբես , ու պիտի յաջողիս .
22 ելի՛ր ու այնպէս ըրէ ։ Եւ հիմա
ահա՛ է Տէրը աս քու մարգարէնե-
րուդ բերանը սուտ ոգի դրեր է .
բայց Տէրը քեզի համար չարիք խօ-
սեցաւ ։
23 Ան ատենը Քանանայի որդին Սե-
դեկիան մօտեցաւ , ու ըՄիքիային
ծնօտին զարկաւ , ու ըսաւ . Տէրոջը
Հոգին *ի՞նչպէս իմ քովէս ելաւ՝
24 քեզի հետ խօսելու համար ։ Եւ
Միքիա ըսաւ . Դուն ալ պիտի
տեսնես՝ ան օրը որ պահուելու հա-
մար սենեակէ սենեակ մտնես ։
25 Ու Իսրայէլի թագաւորը ըսաւ .
Միքիան առէ՛ք , ու զանիկայ Ամոն
քաղաքապետին՝ և թագաւորի որ-
26 դւոյն Յովասին տարէք , Ու ըսէ՛ք .
Թագաւորը այսպէս կ՚ըսէ . ԲԱսի-
կայ բանտը դրէք . ու մինչև որ ես
խաղաղութեամբ դառնամ , զանի-
կայ նեղութեան հացով ու նեղու-
27 թեան ջրով կերակրեցէ՛ք ։ Եւ
Միքիա ըսաւ . Թէ որ բնաւ խա-
ղաղութեամբ դառնաս , Տէրը ինծ-
մով խօսած չըլլայ . ու ըսաւ . Ո՛վ
ժողովուրդներ՝ ամէնքդ ալ լսեցէ՛ք ։
28 Եւ Իսրայէլի թագաւորը ու
Յուդայի Յովսափատ թագաւորը՝
29 Ռամովթ գաղաադը ելան ։ Ու
Իսրայէլի թագաւորը Յովսափատին
ըսաւ . Կերպարանքս պիտի փոխեմ ,
ու այնպէս պատերազմի պիտի մըտ-
նեմ . բայց դուն քու հագուստդ
հագիր . և Իսրայէլի թագաւորը իր
կերպարանքը փոխեց . ու պատե-
30 րազմին մէջը մտան ։ Եւ Ասորւոց
թագաւորը իր կառապետներուն
պատուիրեց ու ըսաւ . Պզտիկի
կամ մեծի հետ մի՛ պատերազմիք ,
բայց միայն Իսրայէլի թագաւորին
31 հետ ։ Ու երբոր կառապետները
Յովսափատը տեսան , Իսրայէլի
թագաւորը ասիկայ է՝ ըսելով , ա-
նոր վրայ պատերազմելու գացին .
և Յովսափատ աղաղակեց . ու Տէ-
րը անոր օգնութիւն ըրաւ . և Աս-
տուած զանոնք անկէ դարձուց ։
32 Ու երբոր կառապետները տեսան որ
անիկայ Իսրայէլի թագաւորը չէ ,
33 անկէ ետ դարձան ։ Եւ մարդուն
մէկը † ուժով մը իր աղեղը քաշեց ,
ու Իսրայէլի թագաւորը ‡ զրահին
օղակներուն մէջէն" զարկաւ . ան
ատենը անիկայ իր կառավարին ը-
սաւ . Ձեռքդ դարձուր , ու զիս
բանակէն հանէ՛ . քանզի վիրաւո-
34 րուեցայ ։ Եւ ան օրը պատերազմը
սաստկացաւ . ու Իսրայէլի թագա-
ւորը մինչև իրիկուն Ասորւոց դի-
մացը՝ իր կառքին մէջը կեցաւ , ու
արևուն մտած ատենը մեռաւ ։

ԳԼ. ԺԹ

1 Յովսափատ՝ Յէու մարգարէէն կը յանդիմա-
նուի . իր թագաւորութեանը մէջ կը պտըտի
ու աստուածպաշտութեան կը յորդորէ ժողո-
վուրդը . 5 դատաւորներուն , 8 քահանանե-
րուն ու Ղևտացիներուն պատուէրներ կու
տայ ։

1 Եւ Յուդայի Յովսափատ թագա-
ւորը խաղաղութեամբ Երուսա-

Է Թու. ԻԲ. 18. 20. 35; ԻԳ. 12. 26; ԻԴ. 13; Գ Թագ. ԻԲ. 14.

Հ Յոբ. Ա. 6.

Է Յոբ. ԺԲ. 16: Ես. ԺԹ. 14; Եզեկ. ԺԴ. 9.

Ը Երեմ. Ի. 2; Մար. ԺԴ. 65; Գոր. ԻԳ. 2.

Ն. Ք. ԴՃ. 897

* Եբր. որ ճամբով

Բ Գլ. ԺԶ. 10.

† Կամ՝ առանց դիտաւորու-
թեան

‡ Եբր. յօդուածնե-
րուն ու զրահին մէջ-
տեղէն

896

Ն. Ք. ՊՂԶ. 896

2 ղէմ իր տունը դարձաւ ։ Ու Անա-
նիի որդին Յէու ա տեսանողը անոր
դիմացը ելաւ, ու Յովսափատ
Թագաւորին ըսաւ. Պէ՞տք էր որ
մեղաւորին օգնէիր, ու բ Տէրը ա-
տողները սիրէիր. ահա ասոր հա-
մար Տէրոջը երեսէն գ քու վրադ
3 բարկութիւն կայ ։ Բայց դ քու
վրադ բարի բաներ գտնուեցան.
քանզի Աստարովթի կուռքերը
երկրէն բնաջինջ ըրիր, ու քու
սիրտդ ե Աստուած խնդրելու պատ-
րաստեցիր ։

4 Եւ Յովսափատ Երուսաղէմի մէջ
կը բնակէր. ու նորէն ելաւ ժողո-
վուրդին մէջը պտըտեցաւ՝ Բերսա-
բէէն մինչև Եփրեմի լեռը, ու
զանոնք իրենց հայրերուն Տէր Աս-
5 տուծոյն դարձուց ։ Ու երկրին
մէջ՝ քաղաք քաղաք դատաւորներ
դրաւ, Յուդայի ամէն պարսպաւոր
6 քաղաքներուն մէջը ։ Եւ դա-
տաւորներուն ըսաւ. Նայեցէ՛ք ինչ
կ'ընէք. քանզի զ ձեր տեսնելու
դատաստանը մարդու չվերաբերիր,
հապա Տէրոջը՝ է որ դատաստա-
7 նի մէջ ձեզի հետ է. Ուրեմն Տէ-
րոջը վախը ձեր վրայ ըլլայ.
զգուշութեամբ բան տեսէք.
քանզի ը մեր Տէր Աստուծոյն քո-
վը անիրաւութիւն, թ աչառու-
թիւն ու կաշառք առնել չը-
կայ ։

8 Եւ Յովսափատ Երուսաղէմի մէջ
ալ՝ ժ Ղևտացիներէն, ու քահանա-
ներէն, ու Իսրայէլի նահապետնե-
րէն դրաւ, Տէրոջը իրաւունքին
համար, ու * դատերու համար. ու
9 Երուսաղէմ դարձան" ։ Եւ անոնց
պատուէր տուաւ ու ըսաւ. Այս-
պէս ըրէ՛ք՝ ի Տէրոջը վախովը, հա-
ւատարմութեամբ ու ուղիղ սըր-
10 տով ։ լ Ու երբոր իրենց քաղաքնե-
րուն մէջը բնակող ձեր եղբայրնե-
րէն դատ մը գայ ձեր առջևը՝ թէ՛
արեան և արեան մէջտեղը, թէ՛
օրէնքի ու պատուիրանքի մէջտե-
ղը, և թէ կանոններու ու դատաս-
տաններու մէջտեղը, անոնց խը-
րատ տուէք, որ Տէրոջը դէմ յան-
ցանք չգործեն. որպէս զի խ ձեր
վրայ ու ձեր եղբայրներուն վրայ
ծ բարկութիւն չգայ. այսպէս ըրէ՛ք՝
11 որ յանցաւոր չըլլաք ։ Եւ ահա
կ Տէրոջը ամէն գործքին համար՝
Ամարիա մեծ քահանան ձեր վրայ
առաջնորդ է, ու թագաւորին ա-
մէն գործքին համար՝ Յուդայի
տանը իշխանը Իսմայէլի որդին
Զաբադիան, ու ձեր առջևէն՝ Ղև-
տացիները ոստիկաններ են. զօ-
րացէ՛ք ու գործ ըրէ՛ք. և Տէրը
հ բարիին հետ ըլլայ ։

ա Թագ. Թ. 9 ։
բ Սաղ. ՃԼԹ. 21 ։
գ Գլ. ԼԲ. 25 ։
դ Գլ. ԺԵ. 4, 6 ։ Տեսգլ. ԺԲ. 12 ։
ե Գլ. Լ. 19 ։ Եզր. Է. 10 ։
զ Բ Օր. Ա. 17 ։
է Սաղ. ՁԲ. 1 ։ Առակ. Ե. 8 ։
ը Բ Օր. ԼԲ. 4 ։ Հռովմ. Թ. 14 ։
թ Բ Օր. Ժ. 17 ։ Յոբ. ԼԴ. 19 ։ Գործ. Ժ. 34 ։ Հռովմ. Բ. 11 ։ Գաղ. Բ. 6 ։ Եփե. Զ. 9 ։ Կող. Գ. 25 ։ Ա Պետ. Ա. 17 ։
ժ Բ Օր. ԺԶ. 18 ։ Գլ. ԺԷ. 8 ։
* Ըստ ոմանց Բարձ. Երուսաղէմի բնակիչները դատելու համար է.
ի Բ Թագ. ԻԳ. 3 ։
լ Բ Օր. ԺԵ. 8, Թ ։
խ Եզեկ. Գ. 18 ։
ծ Թուռ. ԺԳ. 46 ։
կ Ա Մն. ԻԶ. 30 ։
հ Գլ. ԺԵ. 2 ։

## ԳԼ. Ի

1 Յովսափատ վախնալով՝ ծոմապահութիւն կը քարոզէ ։ 5 Անոր աղօթքը ։ 14 Յազիելին մարգարէութիւնը ։ 20 Յովսափատ կը յորդորէ ժողովուրդը, ու երգեցողներ կը դնէ որ Տէրը օրհնեն ։ 22 Թշնամիներուն մեծ կործանումը ։ 26 Ժողովուրդը Օրհնութեան հովիտին մէջ Տէրը օրհնելով՝ յաղթանակաւ կը դառնան ։ 31 Յովսափատին թագաւորութիւնը ։ 35 Անոր նաւերը՝ որ Ոքոզիային հետ շինել տուեր էր, Եղիազարին մարգարէութեանը համեմատ կը կորսուին ։

1 Եւ ասկէ ետքը Մովաբի որդիքը,
ու Ամմոնի որդիքը, ու անոնց
հետ † Մաոնացիներէն ալ Յովսա-
փատին վրայ պատերազմելու ե-
2 կան ։ Ուստի գացին, ու Յովսա-
փատին պատմեցին ու ըսին. Քու
վրադ՝ ծովուն անդիի կողմէն Ա-
սորւոց մէջէն մեծ բազմութիւն
կու գայ. և ահա անոնք ա Ասա-
սանթամարի (այսինքն բ Ենգադ-
3 դիի) մէջ են ։ Ու Յովսափատ
վախցաւ, ու գ Տէրը փնտռելու
‡ ետևէ եղաւ". և բոլոր Յուդայի
մէջ դ ծոմապահութիւն քարոզեց ։
4 Ու Յուդայեանք ժողվուեցան որ
Տէրոջմէ օգնութիւն խնդրեն. ու
Յուդայի բոլոր քաղաքներէն ալ
5 Տէրը խնդրելու եկան ։ Եւ Յով-
սափատ՝ Տէրոջը տանը մէջ նոր
գաւիթին առջևը՝ Յուդայի ու
Երուսաղէմի ժողովքին մէջը կայ-
6 նեցաւ, Ու ըսաւ. Ո՛վ մեր հայ-
րերուն Տէր Աստուածը, դուն ե ան
Աստուածը չէ՞ս՝ որ երկինքը կը
բնակիս, ու զ բոլոր ազգաց թագա-
ւորութիւններուն վրայ կը տիրես,
և է քու ձեռքիդ մէջը անանկ մէկ
զօրութիւն ու ոյժ մը կայ, որ
բնաւ մէկը չկրնար քեզի դէմ դնել.
7 Չէ՞ որ դուն՝ ը ո՛վ մեր Աստուածը,
թ աս երկրիս բնակիչները քու Իս-
րայէլ ժողովուրդիդ առջևէն վը-
ռընտեցիր, ու զանիկայ յաւիտեան
ժ քու սիրելոյդ Աբրահամին սերուն-
8 դին տուիր ։ Եւ անոնք հոն բնա-
կեցան, ու հոն քու անուանդ հա-
մար քեզի սրբարան մը շինեցին,
9 ու ըսին. ի Եթէ որ մեր վրայ չարիք՝
սուր՝ դատաստան՝ ժանտախտ՝ կամ
սով գայ, և մենք աս տանս առջևը՝
ու քու առջևդ կայնինք, (վասն զի
լ աս տանս մէջ քու անունդ կայ,)
ու մեր նեղութեան ատենը քեզի
աղաղակենք, ան ատենը լսես, ու
10 մեզ ազատես ։ Եւ հիմա՝ ահա
Ամմոնի ու Մովաբի որդիքը, ու
Սէիր լեռանը բնակիչները՝ որոնց մէջը
մտնելու խ հրաման չտուիր Իսրա-
յէլի որդւոցը իրենց Եգիպտոսէն
եկած ատենը, հապա ծ անոնցմէ
խոտորեցան, ու զանոնք չկորսըն-
11 ցուցին, Ահա անոնք մեզի հատու-
ցում ընելու համար՝ կ կու գան

Ն. Ք. ՊՂԶ. 896

† Կամ՝ Ամմոնացիներէն ՚ի զատ ուրիշներ
ա Ծն. ԺԴ. 7 ։
բ Յես. ԺԵ. 62 ։
գ Գլ. ԺԹ. 3 ։
‡ Եբր. երեսը դրաւ.
դ Եզր. Ը. 21 ։ Երեմ. ԼԶ. 9 ։ Յովն. Գ. 5 ։
ե Բ Օր. Դ. 39 ։ Յես. Բ. 11 ։ Գ Թագ. Ը. 23 ։ Մատ. Զ. 9 ։
զ Սաղ. ԽԷ. 2, 8 ։ Դան. Դ. 17, 25, 32 ։
է Ա Մն. ԻԹ. 12 ։ Սաղ. ԿԲ. 11 ։ Մատ. Զ. 13 ։
ը Ծն. ԺԷ. 7 ։ Ել. Զ. 7 ։
թ Սաղ. ԽԴ. 2 ։
ժ Ես. ԽԱ. 8 ։ Յակ. Բ. 23 ։
ի Գ Թագ. Ը. 33, 37 ։ Գլ. Զ. 28, 29, 30 ։
լ Գլ. Զ. 20 ։
խ Բ Օր. Բ. 4, 9, 19 ։
ծ Թուռ. Ի. 21 ։
կ Սաղ. ՁԳ. 12 ։

Ն. Ք. ՉՁ.
896

մէջ վռնտելու քու ժառանգու-
12 թենէդ, որն որ մեզի տուիր ։ Ո՛վ
մեր Աստուածը՝ ᶜանոնց դատաս-
տան չե՞ս ըներ. քանզի մեր վրայ
եկող աս մեծ բազմութեանը դէմ
դնելու զօրութիւն չունինք, ու
չենք գիտեր ինչ ընելու ենք. հա-
պա ᵈմեր աչքերը քու վրադ են ։
13 Եւ բոլոր Յուդայեանք իրենց ըն-
տանիքներովը, կնիկներովը՝ ու
տղաքներովը՝ Տէրոջը առջեւը կայ-
ներ էին ։
14 Ան ատենը Ասափի որդիներէն
Ղեւտացի Մաթանիայի որդւոյն
Յէիելի որդւոյն Բանեայի որդւոյն
Զաքարիայի որդւոյն Յազիէլին վը-
րայ ᵉՏէրոջը Հոգին եկաւ ժողով-
15 քին մէջը. Ու անիկայ ըսաւ. Ո՛վ
բոլոր Յուդա ու Երուսաղէմի բնա-
կիչներ, ու դուն Յովսափատ թա-
գաւոր՝ մտիկ ըրէք, Տէրը ձեզի
այսպէս կ՚ըսէ. ᶠԴուք մի վախնաք,
ու աս մեծ բազմութեանը երեսէն
մի զարհուրիք. քանզի պատերազ-
մը ձերը չէ, հապա Աստուծոյ է ։
16 Վաղը անոնց վրայ իջէք. ահա ա-
նոնք Ասիսի զառ՚ի վերը պիտի ել-
լեն. ու զանոնք հեղեղատին ծայրը՝
Յերուելի անապատին առջեւը պիտի
17 գտնէք ։ ᵍԱս պատերազմին մէջ դուք
պիտի չպատերազմիք. դուք երե-
ցէք ու կայնեցէ՛ք, որ Տէրոջը ձե-
զի ըրած փրկութիւնը տեսնէք. ո՛վ
Յուդա ու Երուսաղէմ՝ մի՛ վախ-
նաք ու մի՛ զարհուրիք. վաղը ա-
նոնց դիմացը ելէք. ʰու Տէրը ձեզի
18 հետ պիտի ըլլայ ։ Ան ատենը Յով-
սափատ ⁱերեսը գետինը ծռեց. ու
բոլոր Յուդան, ու Երուսաղէմի
բնակիչները Տէրոջը առջեւը երեսի
վրայ ինկան, ու Տէրոջը երկրպա-
19 գութիւն ըրին ։ Եւ Կահաթեանց
որդիներէն, ու Կորխեանց որդինե-
րէն եղող Ղեւտացիները՝ Իսրայէլին
Տէր Աստուածը խիստ բարձր ձայ-
նով օրհնելու ելան ։
20 Եւ առաւօտուն կանուխ ելան,
ու Թեկուէի անապատը գացին.
ու անոնց երթալու ատենը՝ Յով-
սափատ կայնեցաւ, ու ըսաւ. Ո՛վ
Յուդա ու Երուսաղէմի բնակիչներ՝
ինծի մտիկ ըրէք. ʲՁեր Տէր Ա-
տուծոյն հաւատացէ՛ք, ու ապա-
հով պիտի ըլլաք. անոր մարգարէ-
ներուն հաւատացէ՛ք, ու յաջո-
21 ղութիւն պիտի ունենաք ։ Եւ ժո-
ղովուրդին հետ խորհուրդ ըրաւ,
ու Տէրոջը երգեցողներ որոշեց, որ
զօրքին առջեւէն ելլեն, ᵏու Տէրոջը
սուրբ փառքը օրհնեն, ու ըսեն.
ˡԳոհացէ՛ք Տէրոջմէն, ᵐինչու որ
անոր ողորմութիւնը յաւիտեան է ։
22 Ու երբոր անոնք ցնծութեան
երգը ու օրհնութիւնը սկսան, Յու-
դայի վրայ եկող Ամմոնի ու Մո-
վաբի որդիներուն, ու Սէիր լեռանը
բնակիչներուն դէմ՝ ⁿՏէրը դարանա-
կալներ հանեց. և անոնք կոտրուե-
23 ցան. Քանզի Ամմոնի ու Մովաբի
որդիքը Սէիր լեռանը բնակիչներուն
վրայ ելան, որ զանոնք ջարդեն ու
բնաջինջ ընեն. ու երբոր Սէիրի
բնակիչները հատցուցին, մէկզմէկ
24 կոտրելու ելան ։ Եւ Յուդայեանք
անապատին մէջ եղող դիտանոցը
հասնելով, ան բազմութեանը նա-
յեցան. և ահա անոնց դիերը գետ-
նի վրայ փռուած էին, ու ազա-
25 տուած մը չկար ։ Ան ատենը Յով-
սափատ ու անոր ժողովուրդը անոնց
աւարը ժողվելու գացին. ու դիե-
րուն մէջը շատ ապրանք ու պա-
տուական ամաններ գտան. ու ի-
րենց համար կողոպտեցին, մինչեւ
որ ալ չէին կրնար տանիլ. ու ա-
ւարը իրեք օր ժողվեցին, վասն զի
խիստ շատ էր ։
26 Եւ չորրորդ օրը Օրհնութեան
հովիտը ժողվուեցան. քանզի հոն
Տէրը օրհնեցին. անոր համար ան
տեղւոյն անունը Օրհնութեան հո-
27 վիտ կոչեցին մինչեւ աս օրս ։ Եւ
բոլոր Յուդայի ու Երուսաղէմի
մարդիկները ու անոնց առաջնորդը
Յովսափատ՝ մեծ ուրախութեամբ
Երուսաղէմ դարձան. քանզի Տէրը
ᵒզանոնք իրենց թշնամիներէն աղա-
28 տելով՝ ուրախացուցեր էր. Եւ տա-
ւիղներով, քնարներով ու փողե-
րով Երուսաղէմ Տէրոջը տունը
29 գացին ։ Ու ամէն երկիրներուն
թագաւորութեանցը վրայ ᵖԱս-
տուծոյ վախը ինկաւ, երբոր լսե-
ցին որ Տէրը Իսրայէլի թշնամեացը
30 հետ պատերազմեցաւ ։ Եւ Յովսա-
փատին թագաւորութիւնը խա-
ղաղ էր. ու անոր ᵠԱստուածը
զանիկայ ամէն կողմանէ հանգստա-
ցուց ։
31 ʳԵւ Յովսափատ Յուդայի վրայ
թագաւորութիւն ըրաւ. երսուն-
ուհինգ տարեկան էր՝ երբոր թա-
գաւոր եղաւ, ու քսանուհինգ տա-
րի Երուսաղէմի մէջ թագաւորեց.
և անոր մօրը անունը Ազուբա էր,
32 ˢՍաղիին աղջիկն էր ։ Եւ անիկայ
իր հօրը Ասայի ճամբուն մէջ քա-
լեց, ու անկէ չխոտորեցաւ, Տէրոջը
33 առջեւը ուղղութիւն ընելով ։ Բայց
ᵗբարձր տեղուանքը չվերցան. ու
ժողովուրդը տակաւին ᵘսիրտերնին
չէին շիտկած իրենց հարցը Աստու-
34 ծոյն ։ Եւ Յովսափատին մնացորդ
պատմութիւնը՝ առաջինը ու վեր-
ջինը՝ ահա Իսրայէլի թագաւորնե-
րուն գրքին մէջը յիշուած ᵛԱնա-

Margin references (left): ᶜ Դատ. Գ. 13 ։ ᵈ Սաղ. ԻԵ. 15. ՃԻԱ. 1, 2. ՃԻԳ. 1, 2. ՃԼԸ. Տ ։ ᵉ Թուոց. ԺԱ. 25. 26. ԻԴ. 2. Գլ. ԺԵ. 1. ԻԴ. 20 ։ ᶠ Ել. ԺԴ. 13, 14. Բ Օր. Ա. 29. 30. Լ. 6, 8. Գլ. ԼԲ. 7 ։ ᵍ Ել. ԺԴ. 13, 14 ։ ʰ Թուոց. ԺԴ. 9. Գլ. ԺԵ. 2. Լ. 8 ։ ⁱ Ել. Դ. 31 ։ ʲ Ես. Է. 9 ։ ᵏ Ա Մն. ԺԶ. 29 ։ ˡ Ա Մն. ԺԶ. 34. Սաղ. ՃԼԶ. 1 ։ ᵐ Ա Մն. ԺԶ. 41. Գլ. Ե. 13. Է. 3, 6 ։

Margin references (right): Ն. Ք. ՉՁ. 896. ⁿ Դատ. Է. 22. Ա Թագ. ԺԴ. 20 ։ ᵒ Նեեմ. ԺԲ. 43 ։ ᵖ Գլ. ԺԷ. 10 ։ ᵠ Գլ. ԺԵ. 15. Յոբ. ԼԴ. 29 ։ ʳ Գ Թագ. ԻԲ. 41, Ճ ։ ᵗ Տես Գլ. ԺԷ. 6 ։ ᵘ Գլ. ԺԲ. 14. ԺԹ. 3 ։ ᵛ Գ Թագ. ԺԶ. 1, 7 ։

Ն. Ք. ԱՌ. 896

նիի որդւոյն Յէուին պատմութեա-
նը մէջ գրուած է ։
35 Եւ ասկէ ետքը ‡ Յուդայի Յով-
սափատ թագաւորը չարութիւն ը-
նող Իսրայէլի Ոքոզիա թագաւո-
36 րին հետ միաբանեցաւ ․ ° Ու անոր
հետ ընկերութիւն ըրաւ , որ Թար-
սիս երթալու նաւեր շինեն ․ ու
Գասիոնգաբերի մէջ նաւեր շինե-
37 ցին ։ Եւ Մարեսացի Դօդիայի
որդին Եղիազարը՝ Յովսափատին
վրայ մարգարէութիւն ըրաւ , ու
ըսաւ . Որովհետեւ դուն Ոքոզիային
հետ ընկերացար , Տէրը քու գործքդ
աւրեց ։ ° Ու նաւերը խորտակեցան ,
ու չկրցան § Թարսիս երթալ ։

‡ Գ Թագ. իբ. 49, 50։ ° Տես Գ Թագ. իբ. 50։ ° Գ Թագ. իբ. 49։ § Գլ. Թ. 21։

## ԳԼ. ԻԱ

1 Յովրամ՝ Յովսափատին տեղը յաջորդելով , իր եղբայրները կը մեռցընէ ։ 5 Անոր չար վարմունքը ։ 8 Եդովմ ու Լեբնա կ՚ապստամբին ։ 12 Եղիային անոր դէմ գրած մարգարէական գիրը ։ 16 Փղշտացիք ու Արաբացիք կը նեղեն զանիկայ ։ 18 Անոր անբժշկելի ախտը , անպատիւ մահը , ու թաղումը ։

889

1 Իսկ ° Յովսափատ իր հայրերուն
հետ քնացաւ , ու իր հայրերուն
հետ Դաւիթի քաղաքին մէջը թա-
ղուեցաւ . ու անոր տեղը՝ անոր որ-
2 դին Յովրամը թագաւոր եղաւ ։ Ու
անոր եղբայրները՝ Յովսափատի որ-
դիքը՝ Ազարիա , Յեքիէլ , Զա-
քարիա , Ազարիու , Միքայէլ ու
Սափատիա էին . ասոնք ամէնը Իս-
րայէլի թագաւորին Յովսափատին
3 որդիքն էին ։ Եւ անոնց հայրը՝
արծաթ ու ոսկի ու թանկագին
բաներ՝ շատ պարգեւներ տուաւ ա-
նոնց , նաեւ Յուդայի մէջ պարսպա-
ւոր քաղաքներ . բայց թագաւորու-
թիւնը ‡ Յովրամին տուաւ . քանզի
4 անդրանիկը ան էր ։ Ու երբոր
Յովրամ իր հօրը թագաւորու-
թեանը աթոռը նստաւ՝ ու զօրա-
ցաւ , իր բոլոր եղբայրները , ու Իս-
րայէլի իշխաններէն մէկ քանիները
սրով մեռցուց ։
5 ° Յովրամ երսունուերկու տարե-
կան էր՝ երբոր թագաւոր եղաւ , ու
Երուսաղէմի մէջ ութը տարի թա-
6 գաւորութիւն ըրաւ ։ Եւ անիկայ
Աքաաբին տանը ըրածին պէս՝ Իս-
րայէլի թագաւորներուն ճամբուն
մէջ քալեց , ( քանզի ⸗ Աքաաբին
աղջիկը անոր կնիկն էր . ) ու Տէ-
րոջը առջեւը չարութիւն ըրաւ ։
7 Բայց Տէրը Դաւիթին հետ ըրած
ուխտին համար , եւ անոր ու անոր
‡ որդւոցը միշտ մէկ ճրագ մը տալու
խոստմունքին համար , Դաւիթին
տունը կորսընցընել չուզեց ։
8 ‡ Անոր օրերը Եդովմայեցիք Յու-
դային ձեռքին տակէն ապստամբե-
ցան , ու իրենց վրայ թագաւոր մը
9 դրին ։ Եւ Յովրամ իր իշխաննե-
րովը ու բոլոր կառքերովը գնաց ,
ու գիշերով ելաւ . ու իր չորս կողմը
առնող Եդովմայեցիները ու կառ-
10 քերու իշխանները զարկաւ ։ Բայց
Եդովմայեցիք Յուդայի ձեռքին
տակէն ապստամբեցան մինչեւ աս
օրս . ան ատենը Լեբնան ալ անոր
ձեռքին տակէն ապստամբեցաւ .
քանզի անիկայ իր հայրերուն Տէր
11 Աստուածը թողուցեր էր ։ Անիկայ
Յուդայի լեռներուն վրայ բարձր
տեղեր ալ շինեց . ու Երուսաղէմի
բնակիչներուն ‡ պոռնկութիւն ը-
նել տուաւ , ու Յուդան գլխէ հա-
նեց ։
12 Ու Եղիա մարգարէէն անոր
թուղթ եկաւ , որ կ՚ըսէր . Քու
հօրդ Դաւիթին Տէր Աստուածը
այսպէս կ՚ըսէ . Որովհետեւ քու
հօրդ Յովսափատին ճամբաները ,
ու Յուդայի Ասա թագաւորին
13 ճամբաները չբռնեցիր , Հապա Իս-
րայէլի թագաւորներուն ճամբա-
ները բռնեցիր . ու ‡ Յուդայի ու
Երուսաղէմի բնակիչներուն՝ ‡ Ա-
քաաբին տանը պոռնկութիւննե-
րուն պէս՝ ° պոռնկութիւն ընել
տուիր . ու նաեւ ‡ քեզմէ աղէկ ե-
ղող եղբայրներդ՝ քու հօրդ * որդի-
14 ները մեռցուցիր , Ահա Տէրը քու
ժողովուրդդ , քու որդիներդ , ու
կնիկներդ , ու քու բոլոր ստա-
ցուածքդ մեծ հարուածով պիտի
15 զարնէ ․ Ու դուն չարաչար պիտի
հիւանդանաս ‡ փորի հիւանդու-
թիւնով . մինչեւ որ փորոտիքդ
դուրս պիտի թափի ան հիւան-
դութեանը պատճառաւը , օրէ
օր [illegible] ։
16 Եւ Տէրը ‡ Յովրամին դէմ գրրգ-
ռեց Փղշտացիները , ու Եթէովպա-
ցւոց մօտերը բնակող Արաբացինե-
17 րը . Եւ անոնք Յուդայի վրայ ե-
լան , ու զանիկայ կողոպտեցին . ու
թագաւորին տանը մէջ գտնուած
բոլոր ստացուածքը , ու ° անոր որ-
դիները , ու կնիկներն ալ քշեցին
տարին . ու անոր որդիներէն մի-
նակ անոր պզտիկ որդին ‡ Յովա-
քազը մնաց ։
18 Եւ աս բոլոր բաներէն ետքը՝
Տէրը զանիկայ անանկ ‡ փորոտիքի
հիւանդութեամբ մը զարկաւ , որ
19 անբժշկելի էր ։ Ու քիչ մը օրե-
րէն ետքը՝ այսինքն երկու տարիի
չափ ժամանակ անցնելէն ետքը՝ իր
հիւանդութենէն փորոտիքը դուրս
թափեցաւ , ու չարաչար հիւան-
դութիւնով մեռաւ ։ Եւ ժողո-
վուրդը անոր վրայ ‡ խունկեր չծխե-
ցին . ինչպէս որ ‡ անոր հայրերուն
20 վրայ ծխեր էին ։ Անիկայ թագա-

Left margin: 889 ⸗ Գ Թագ. իբ. 51։ 892 Յովրամ աթոռակից եղաւ իր հօրը։ ‡ Դ Թագ. ը. 16։ ° Դ Թագ. ը. 17, եւ։ ⸗ Գլ. իբ. 2։ ‡ Բ Թագ. է. 12, 13։ Գ Թագ. ժա. 36։ Դ Թագ. ը. 19։ Սաղ. ճլբ. 11, եւ։ 889 ‡ Դ Թագ. ը. 20, եւ։

Right margin: Ն. Ք. ԱՌ. 889 ‡ Ղեւ. ժէ. 7։ Ի. 5։ Հմր 13։ ‡ Հմր 11։ ‡ Դ Թագ. ժզ. 31—33։ Դ Թագ. Թ. 22։ ° Ել. Լդ. 15։ Բ Օր. Լա. 16։ ‡ Հմր 4։ * Եբր. տունը ‡ Հմր 18. 19։ Իբր 887 ‡ Գ Թագ. ժա. 14, 23։ 887 ° Գլ. իբ. 7։ ‡ Գլ. իբ. 1 կ՚ըսուի Ոքոզիա, իսկ իբ. 6 Ազարիա։ 885 ‡ Հմր 15։ ‡ Գլ. ժզ. 14։

Ն. Ք. ԳՔ.
885

ՂԵրեմ. ԻԲ. 18.
* ԵԲՐ. առանց փափաքի.

ւոր եղած ատենը՝ երսունուերկու
տարեկան էր . և ութը տարի Ե-
րուսաղէմի մէջ թագաւորութիւն
ըրաւ . և անիկայ մեռաւ *առանց
մէկու մը անոր վրայ ցաւելուն" . ու
զանիկայ Դաւիթի քաղաքին մէջը
թաղեցին , բայց ոչ թէ թագա-
ւորաց գերեզմաններուն մէջը ։

ԳԼ. ԻԲ

1 Ոքոզիա իր հօրը տեղը կը յաջորդէ ։ ու չար կերպով կը թագաւորէ . 5 Աքաաբի որդւոյն Յովրամին հետ դաշնակցութիւն ունենալով՝ Յէուէն կը սպաննուի ։ 10 Գոթողիա՝ բոլոր թագաւորական սերունդը կորսընցընելով , բաց 'ի Յովասէն՝ որն որ անոր Յօսաբէէ հօրաքոյրը պահեր էր ։ ինքը կը յափշտակէ թագաւորութիւնը ։

885
- Դ Թագ. Ը. 24, Ա. Տեռ ԴԼ. ԻԱ. 17. ՀԺր 6.
Բ ԳԼ. ԻԱ. 17.
† Ըստ Ա. Եբր. Բ Ա. Երբ. Բ. քառասունուերկու. տես նաև Դ Թագ. Ը. 26.
‡ ԳԼ. ԻԱ. 6.

1 Ու Երուսաղէմի բնակիչները՝ անոր
տեղը անոր պզտիկ որդին *Ո-
քոզիան թագաւոր ըրին . քանզի
Արաբացւոց բանակովը եկող գուն-
դերը բոլոր *անդրանիկ մեծերը մեռցու-
ցեր էին . այսպէս Յուդայի Յով-
րամ թագաւորին որդին Ոքոզիան
2 թագաւորեց ։ Ոքոզիա †քառա-
սունուերկու տարեկան էր՝ երբոր
թագաւոր եղաւ , ու Երուսաղէմի
մէջ մէկ տարի թագաւորութիւն
ըրաւ . և անոր մօրը անունը ‡Գո-
թողիա էր , *Ամրիին աղջիկն էր ։
3 Անիկայ ալ Աքաաբին տանը ճամ-
բաներուն մէջ քալեց . քանզի ա-
նոր մայրը չարութիւն ընելու խոր-
4 հուրդ կու տար անոր ։ Ու անի-
կայ Տէրոջը առջևը չարութիւն ը-
րաւ Աքաաբին տանը պէս . վասն
զի իր հօրը մեռնելէն ետքը՝ ա-
նոնք էին իր խորհրդականները՝ իր
5 կործանմանը համար ։ Եւ անիկայ
անոնց խորհրդովը գնաց , *ու Ա-
քաաբեան Յովրամին՝ Իսրայէլի
թագաւորին հետ՝ Ասորւոց Ազա-
յէլ թագաւորին վրայ Ռամովթ
Գաղաադը պատերազմելու գնաց .
ու Ասորիք Յովրամը զարկին ։
6 *Եւ անիկայ դարձաւ որ Յեզրայէլի
մէջ բժշկուի այն վէրքերէն՝ որ Ա-
*սորիները անոր տուեր էին ‡Ռա-
մովթի մէջ , Ասորւոց Ազայէլ
թագաւորին հետ պատերազմ ը-
րած ատենը . ու Յուդայի թագա-
ւորը Յովրամի որդին ‖Ազարիան
Յեզրայէլ իջաւ՝ Աքաաբի որդին
Յովրամը տեսնելու , վասն զի անի-
7 կայ հիւանդ էր ։ Եւ Ոքոզիային
կործանումը *Աստուծմէ եղաւ ,
Յովրամին քովը երթալովը . վասն
զի երբոր անիկայ հոն գնաց , *Յով-
րամին հետ Նամեսսեան Յէուն դի-
մաւորելու ելաւ , *որն որ Տէրը օ-
ծեր էր՝ Աքաաբին տունը բնա-
8 ջնջ ընելու համար ։ Ու երբոր
Յէու *Աքաաբին տանը վրայ Ա-
*տաստաստան վճիռը 'ի գործ կը դնէր ,
*Յուդայի իշխանները , և Ոքոզիա-
յին ծառայութիւն ընող Ոքոզիա-
յին եղբօրորդիները գտաւ , ու զա-
9 նոնք մեռցուց . *Եւ Ոքոզիան *ալ
փնտռեց , որ Սամարիայի մէջ պա-
հուած էր . ու զանիկայ բռնեցին ,
և Յէուին բերելով՝ մեռցուցին , ու
զանիկայ թաղեցին . քանզի ըսին .
Ասիկայ *Տէրը բոլոր սրտով խնդ-
րող Յովսափատին որդին է ։ Ու
Ոքոզիային տունէն մէկը չկար՝ որ
թագաւորութիւնը պահելու կա-
րող ըլլայ ։
10 *Իսկ Ոքոզիային մայրը Գոթո-
ղիա՝ իր որդւոյն մեռնիլը տեսնե-
լով՝ ելաւ , ու Յուդայի տանը բոլոր
թագաւորական սերունդը բնաջինջ
11 ըրաւ ։ Բայց *թագաւորին աղ-
ջիկը Յօսաբէէ՝ Ոքոզիային որդին
Յովասը առաւ , ու թագաւորին
սպաննուած որդւոցը մէջէն գող-
ցաւ զանիկայ , և անոր դայեակին
հետ՝ անկողիններու սենեակին մէջը
դրաւ զանիկայ . ու *Յօրամ Յով-
րամ թագաւորին աղջիկը՝ Յովիա-
դա քահանային կնիկը՝ Ոքոզիային
քոյրը ըլլալով՝ Գոթողիային երե-
սէն պահեց , որ զանիկայ չմեռցուց ։
12 Եւ Յովաս անոնց հետ վեց տարի
Աստուծոյ տանը մէջ պահուեցաւ .
ու երկրին վրայ Գոթողիա թա-
գաւորութիւն կ'ընէր ։

884
- Դ Թագ. Ը. 28, Ա.
Բ Դ Թագ. Թ. 15.
‡ ԵԲՐ. Ռամայի
‖ Կամ՝ Ոքոզիա. հմր 1. Բ Կամ Յովաքազ. ԳԼ. ԻԱ. 17.
*Դատ. ԺԴ. 4. Դ Թագ. ԺԲ. 15. ԳԼ. Ժ. 15.
Բ Դ Թագ. Թ. 21.
Ը Դ Թագ. Թ. 6. 7.
Բ Դ Թագ. Ժ. 10. 11.

Ն. Ք. ԳՔ.
884
Ժ Դ Թագ. Ժ. 13. 14.
Բ Տես Դ Թագ. Թ. 27.
Ա ԳԼ. ԺԷ. 4.
Բ Դ Թագ. ԺԱ. 1, Ա.
Ժ Գ Թագ. ԺԱ. 2.
878

ԳԼ. ԻԳ

1 Յովիադա ամէն բանը կարգի դնելով՝ Յովասը թագաւոր կը նստեցընէ ։ 12 Գոթողիա կը սպաննուի ։ 16 Յովիադա՝ Աստուծոյ երկրպագութիւն ընելը կը նորոգէ ։

1 Ու *եօթներորդ տարին՝ Յովիա-
դան ուժովցաւ , դաշնադրու-
թեամբ իր հետը առնելով հարիւ-
րապետները , Յերոամի որդին Ա-
զարիան , և Յօհանանի որդին Իս-
մայէլը , ու Ովբեդի որդին Ազա-
րիան , և Ադայիայի որդին Մաա-
սիան , ու Զիքրիի որդին Եղիսա-
2 փատը ։ Եւ անոնք Յուդայի մէջ
պտըտեցան . ու Յուդայի ամէն
քաղաքներէն Ղևտացիները , ու
Իսրայէլի տոհմերուն իշխանները
ժողվեցին , ու Երուսաղէմ եկան ։
3 Եւ բոլոր ժողովքը՝ Աստուծոյ տա-
նը մէջ թագաւորին հետ դաշնակ-
ցութիւն ըրին . ու *Յովիադա անոնց
ըսաւ . Ահա թագաւորին որդին
թագաւոր պիտի ըլլայ , ինչպէս որ
Տէրը *Դաւիթին որդւոցը համար
4 ըսաւ . Ձեր ընելու բանը աս է . ձեր
երրորդ մասը՝ թէ քահանաներէն և
թէ Ղևտացիներէն *շաբաթը մտո-
նողները՝ դռներուն պահապանու-
5 թիւնը ընեն . Ու *մէկ երրորդ մասը՝

878
- Դ Թագ. ԺԱ. 4, Ա.
Բ Ր Թագ. Է. 12. Գ Թագ. Բ. 4. Թ. 5. ԳԼ. Զ. 16. Է. 18. ԻԱ. 7.
Գ Ա ԱՆ. Թ.

Ն. Ք. Զ. Ք. 878

Թագաւորին տունը, ու երրորդ մա-
սը՝ հիման դուռը ըլլան . բայց բոլոր
ժողովուրդը Տէրոջը տանը գաւիթ-
6 ներուն մէջը կայնի . Իսկ Տէրոջը
տունը՝ քահանաներէն ու բ ծառա-
յութիւն ընող Ղեւտացիներէն 'ի
զատ՝ ուրիշ մարդ չմտնէ . անոնք
թող մտնեն , քանզի անոնք սուրբ
են . և բոլոր ժողովուրդը Տէրոջը
7 պահպանութիւնը պահեն . Ու Ղե-
տացիք ամէն մարդ իր զէնքը ձեռ-
քը բռնած՝ թագաւորին բոլորտի-
քը կայնին . ու տունը մտնողը
մեռցուի . և թագաւորին հետը ըլ-
լան՝ անոր մտած ու ելած ատենը :
8 Ու Ղեւտացիք ու բոլոր Յուդան՝
Յովիադա քահանային բոլոր պա-
տուիրածին պէս ըրին . և ամէն մէ-
կը իր մարդիկները առաւ , թէ՝ շա-
բաթ օրը մտնողները և թէ շաբաթ
օրը ելլողները . քանզի Յովիադա
քահանան է դասակարգութիւնները
9 չարձակեց : Եւ Յովիադա քահա-
նան՝ Դաւիթ թագաւորին նիզակ-
ները , ասպարները ու վահանները՝
որոնք Աստուծոյ տանը մէջ էին ,
10 հարիւրապետներուն տուաւ . Եւ
բոլոր ժողովուրդը ամէն մարդ իր
զէնքը ձեռքը՝ տանը աջ կողմէն
մինչև ձախ կողմը՝ սեղանին ու
տանը քովը՝ թագաւորին բոլորտի-
11 քը կայնեցուց : Եւ թագաւորին
որդին հանեցին , ու ը անոր վրայ
դրին թագը ու վկայութիւնը , ու
զանիկայ թագաւոր ըրին . և Յո-
վիադա ու անոր որդիքը զանիկայ
օծեցին , ու ըսին . Կեցցէ՛ արքայ :
12 Իսկ Գոթողիա լսելով ժողովուր-
դին ձայնը՝ որ կը վազէին ու թա-
գաւորը կ'օրհնէին , Տէրոջը տու-
13 նը ժողովուրդին եկաւ . Ու տե-
սաւ որ՝ ահա թագաւորը իր սիւ-
նին քովը դրան մուտքը կայ-
ներ էր , և զօրապետները ու փո-
ղերը թագաւորին քովն էին , ու
երկրին բոլոր ժողովուրդը ու-
րախանալով՝ փողեր կը հնչեցը-
նէին , ու երգեցողները երգի
նուագարաններով , ու ժ երաժըշ-
տապետները օրհնութիւններ կ'եր-
գէին . ան ատենը Գոթողիա իր
հանդերձները պատռեց , ու ըսաւ .
Դաւաճանութիւն է , դաւաճա-
14 նութիւն : Եւ Յովիադա քահա-
նան զօրքին վրայ եղող հարիւրա-
պետները հանեց , ու անոնց ըսաւ .
Ասիկայ գունդերուն մէջէն հանե-
ցէք , ու ասոր ետեւէն գացողը
սրով մեռցուի . (քանզի քահանան
ըսեր էր . Զանիկայ Տէրոջը տանը
15 մէջ մի՛ մեռցընէք :) Եւ անոր վրայ
ձեռքերնին երկընցուցին . ու երբ-
որ անիկայ թագաւորական տանը

բ Ա Մն. իգ. 28, 29:
է Տես Ա Մն. իդ. իե:
ը Բ Օր. ժէ. 18:
ժ Ա Մն. իե. 8:

ձիերու դռնէն ներս կը մտնէր ,
զանիկայ հոն մեռցուցին :
16 Եւ Յովիադա իրեն՝ ու բոլոր
ժողովուրդին՝ ու թագաւորին մէջ-
տեղը դաշնակցութիւն ըրաւ , որ
17 Տէրոջը ժողովուրդը ըլլան : Եւ
բոլոր ժողովուրդը Բահաղին տունը
մտան , ու զանիկայ կործանեցին ,
և անոր սեղանները ու կուռքերը
կտոր կտոր ըրին , ու ի Բահաղին
քուրմը Մատթանը սեղաններուն
18 առջևը սպաննեցին : Եւ Յովիա-
դա՝ Ղեւտացի քահանաներուն ձեռ-
քովը՝ Դաւիթին Տէրոջը տանը վը-
րայ ժ որոշած Տէրոջը տանը պաշ-
տօնեաները դրաւ , որ ի Մովսէսին
օրէնքը մէջ գրուածին պէս՝ Տէ-
րոջը ողջակէզներ մատուցանեն ու-
րախութեամբ ու երգով , ինչպէս
19 որ լ Դաւիթ սահմաներ էր : Եւ
ի դռնապանները Տէրոջը տանը
դռները կայնեցուց , որպէս զի ինչ և
իցէ կերպով անմաքուր եղող մարդ
20 մը չմտնէ : ծ Ու անիկայ՝ հարիւրա-
պետները , ու ազնուականները , և
ժողովուրդին իշխանները , ու երկ-
րին բոլոր ժողովուրդը առաւ , ու
թագաւորը Տէրոջը տունէն իջե-
ցուց . և բարձր դռնէն թագաւո-
րին տունը մտան . ու թագաւորը
նստեցուցին թագաւորութեանը
21 աթոռին վրայ : Ու երկրին բոլոր
ժողովուրդը ուրախացաւ , և քա-
ղաքը հանգստութեան մէջ էր . ու
Գոթողիան սրով մեռցուցին :

## ԳԼ. ԻԴ

1 Յովաս աղէկ կերպով կը կառավարէ ժողովուր-
դը՝ Յովիադային բոլոր օրերուն մէջ . 4 կը
հրամայէ որ տաճարը նորոգեն : 15 Յովիադա-
յին մահը ու պատուաւոր թաղումը : 17 Յո-
վաս՝ կռապաշտութեան իյնալով՝ Յովիադա-
յին որդին Զաքարիան կը մեռցընէ : 23 Ա-
սորիք կը կողոպտեն Յովասը , ու անոր ծառա-
ները Զաբադ ու Յովզաբադ կը մեռցընեն զա-
նիկայ : 27 Ամասիա անոր տեղը կը յաջորդէ :

1 Յովաս ա եօթը տարեկան էր՝ երբոր
թագաւոր եղաւ , ու Երուսա-
ղէմի մէջ քառասուն տարի թագա-
ւորութիւն ըրաւ . ու անոր մօրը
անունը Սաբիա էր , Բերսաբէէ
2 քաղաքէն : Եւ Յովաս՝ Յովիադա
քահանային բոլոր օրերուն մէջ՝
բ Տէրոջը առջևը ուղղութիւն ը-
3 րաւ : Ու Յովիադա անոր երկու
կնիկ առնել տուաւ . ու տղաքներ
ու աղջիկներ ծնաւ :
4 Եւ ասկէ ետքը՝ Յովաս ուզեց որ
5 Տէրոջը տունը նորոգէ : Ու քա-
հանաները ու Ղեւտացիները ժող-
վեց , և անոնց ըսաւ . Յուդայի
քաղաքները ելէք , ու ձեր Աստու-
ծոյն տունը նորոգելու համար՝
գ բոլոր Իսրայէլէն տարուէ տարի

Ն. Ք. Զ. Ք. 878
ը Նեեմ. գ. 28:
ի Բ Օր. ժգ. 9:
ժ Ա Մն. իգ. 6, 30, 31: իդ. 1:
ի Թու. իը. 2:
լ Ա Մն. իե. 2, 6:
ի Ա Մն. իզ. 1, ԺԳ:
ծ Դ Թագ. ժա. 19:
Իբր 878
ա Դ Թագ. ժա. 21: ժբ. 1, ԺԳ:
բ Տես գլ. իզ. 5:
856
գ Դ Թագ. ժբ. 4:

Ն. Ք. ԶՔ. 856

ստակ ժողվեցէք, ու աս գործը շու-
տով ըրէք. բայց Ղեւտացիք շու-
դ Թագ. ժբ. 7։
6 տով չըրին ։ Եւ Թագաւորը
Յովիադա իշխանը կանչեց, ու ա-
նոր ըսաւ. Տէրոջը ծառային
Ելք. Լ. 12, 13, 14, 16։
Մովսէսին ու Իսրայէլի ժողովքին
վկայութեան խորանին համար
Ղ Թու. ա. 50։ Գոր. է. 44։
պատուիրած տուրքը ինչո՞ւ համար
Ղեւտացիներէն չպահանջեցիր, որ
Յուդայէն ու Երուսաղէմէն բերեն ։
Ե Գլ. իա. 17։
7 (Քանզի անօրէն Գոթողիան՝ ու
անոր որդիքը՝ Աստուծոյ տունը
աւրեր էին, ու Տէրոջը տանը բո-
Ըդ Թագ. ժբ. 4։
լոր նուէրը բաները՝ Բահաղիմին
8 նուիրեր էին ։) Եւ թագաւորը
Բ դ Թագ. ժբ. 9։
հրամայեց. Ու մէկ սնտուկ մը
շինեցին, ու զանիկայ Տէրոջը տա-
նը դրանը դուրսի կողմը դրին ։
9 Եւ Յուդայի մէջ ու Երուսաղէմի
մէջ մունետիկ կանչել տուին, որ
Աստուծոյ ծառային Մովսէսին՝
անապատին մէջ Իսրայէլին պա-
Ծ Հմր. 6։
տուիրած տուրքը Տէրոջը բերեն ։
10 Եւ բոլոր իշխանները ու բոլոր ժո-
ղովուրդը ուրախացան, ու բերին
սնտուկին մէջը ձգեցին, մինչեւ որ
11 անիկայ լեցուեցաւ ։ Ու երբոր
սնտուկը Ղեւտացւոց ձեռքովը թա-
գաւորին վերակացուներուն կը
Ե դ Թագ. ժբ. 10։
տարուէր, եւ անոնք կը տեսնէին
որ ստակը շատցեր է, թագաւորին
գրագիրը ու մեծ քահանային վերա-
կացուն կու գար. եւ սնտուկը կը
պարպէին, ու զանիկայ վերցնելով՝
իր տեղը կը դարձնէին. օրէ օր
այսպէս կ՚ընէին. ու շատ ստակ
12 ժողվեցին ։ Եւ թագաւորը ու
Յովիադան՝ զանիկայ Տէրոջը տա-
նը ծառայութեան գործը ընողնե-
րուն կու տային. ու անոնք Տէրո-
ջը տունը նորոգելու համար՝ վարձ-
քով քարահատներ ու հիւսներ կը
բռնէին. ու Տէրոջը տունը ամրա-
ցնելու համար՝ երկաթագործնե-
րուն ու պղնձագործներուն ալ
13 կը վարձէին ։ Եւ բանուորները կ՚աշ-
խատէին. ու նորոգութեան գոր-
ծը անոնց ձեռքովը կատարուե-
ցաւ. ու Աստուծոյ տունը իր
ձեւին բերելով՝ զանիկայ ամրա-
14 ցուցին ։ Ու երբոր նորոգութիւնը
լմնցուցին, մնացած ստակը թա-
գաւորին ու Յովիադային առջեւը
Ն Տես դ Թագ. ժբ. 13։
բերին. Ու անով՝ Տէրոջը տանը
համար անօթներ, պաշտօնին ու
ողջակէզներուն համար ամաններ,
ու խնկամաններ, եւ ուրիշ ոսկիէ
ու արծաթէ ամաններ շինեցին. ու
Յովիադային բոլոր օրերը՝ Տէրոջը
տանը մէջ միշտ ողջակէզներ կը
մատուցանէին ։

Իբր 850

15 Եւ Յովիադա ծերացած ու օրե-
րը լեցուած ըլլալով՝ մեռաւ. ու
մեռած ատենը՝ հարիւր երսուն

Ն. Ք. ԶՔ. Իբր 850

16 տարեկան էր ։ Եւ զանիկայ Դա-
ւիթի քաղաքին մէջը՝ թագաւո-
րաց հետ թաղեցին. քանզի անի-
կայ Իսրայէլի մէջ՝ Աստուծոյ ու
անոր տանը համար աղէկութիւն
ըրեր էր ։

Իբր 840

17 Եւ Յովիադային մեռնելէն ետ-
քը՝ Յուդայի իշխանները եկան,
ու թագաւորին երկրպագութիւն
ըրին. ան ատենը թագաւորը ա-
18 նոնց մտիկ ըրաւ. Ու իրենց հարցը
Տէր Աստուծոյն տունը թողուցին,
եւ Աստարովթի կուռքերուն ու
դ Թագ. ժգ. 23։
չաստուածներուն ծառայութիւն
ըրին. եւ Յուդայի ու Երուսաղէմի
վրայ բարկութիւն եկաւ՝ իրենց
Դատ. ե. 8։ Գլ. ժթ. 2։ իբ. 13։ իթ. 8։ լբ. 25։
19 աս յանցանքին համար ։ Վասն զի
անոնց մարգարէներ խրկեց, որ
զանոնք Տէրոջը դարձնեն. ու ա-
նոնց վկայութիւն ըրին. բայց
Գլ. լզ. 15։ Երեմ. է. 25, 26։ իե. 4։
անոնք մտիկ չըրին ։
20 Եւ Յովիադա քահանային որ-
դւոյն Զաքարիային վրայ Աս-
Գլ. ժե. 1։ ի. 14։
տուծոյ Հոգին եկաւ. ու անիկայ
ժողովուրդին մէջը բարձր տեղ մը
կայնեցաւ, ու անոնց ըսաւ. Աս-
տուած այսպէս կ՚ըսէ. Դուք ին-
Թու. ժդ. 41։
չո՞ւ համար Տէրոջը պատուիրանք-
ներէն կը խոտորիք. դուք բնաւ
յաջողութիւն պիտի չգտնէք.
Քանզի դուք Տէրը մերժեցիք. ան
Գլ. ժե. 2։ 840
21 ալ ձեզ պիտի մերժէ ։ Եւ անոնք՝
անոր դէմ միաբանեցան, ու զանի-
կայ թագաւորին հրամանովը՝ Տէ-
րոջը տանը գաւիթին մէջ քարե-
Մատ. իգ. 35։ Գոր. է. 57, 58։
22 րով քարկոծեցին ։ Եւ Յովաս
թագաւորը՝ անոր հօրը Յովիադա-
յին իրեն ըրած բարերարութիւնը
չյիշելով՝ անոր որդին մեռցուց.
ու անիկայ՝ մեռած ատենը ըսաւ.
Տէրը տեսնէ, ու *դատէ ։
*Եբր. խընդրէ։
23 Եւ հետեւեալ տարին՝ Ասորւոց
839
զօրքը անոր դէմ ելլելով, Յուդայի
ու Երուսաղէմի վրայ եկան, ու ժո-
դ Թագ. ժբ. 17։
ղովուրդին բոլոր իշխանները մեռ-
ցուցին, ու անոնց բոլոր աւարը
Դամասկոսի թագաւորին խրկեցին ։
24 Ասորւոց զօրքը քիչ մարդիկներով
Ղեւ. իզ. 8։ բ Օր. լբ. 30։ Եսա. լ. 17։
եկաւ. բայց Տէրը խիստ շատ
եղող զօրքը անոնց ձեռքը մատ-
նեց. քանզի անոնք իրենց հայրե-
Ղեւ. իզ. 25։ բ Օր. իը. 25։
րուն Տէր Աստուածը թողուցեր
էին ։ Այսպէս Ասորիք Աստուծոյ
Գլ. իբ. 8։ Ես. ժ. 5։
դատաստանը 'ի գործ դրին Յովա-
25 սին վրայ ։ Ու երբոր անոնք գա-
ցին անկէ, մեծ հիւանդութիւննե-
րու մէջ ձգելով զանիկայ, անոր
դ Թագ. ժբ. 20։
ծառաները՝ անոր դէմ դաւաճա-
նութիւն ըրին Յովիադա քահա-
Հմր 21։
նային որդւոցը արեանը համար,
ու զանիկայ իր անկողնին մէջը
սպաննեցին, ու մեռաւ. ու զանի-

Ն․ Ք․ ԶՔ․
839

ղ Դ Թագ․ ԺԲ․ 21 Շը֊մաթ Յովզաքար ։
Ձ Դ Թագ․ ԺԲ․ 18 ։
* Եբր․ հիմանը
ա Դ Թագ․ ԺԲ․ 21 ։

կայ Դաւիթի քաղաքին մէջը թա֊
ղեցին․ բայց թագաւորաց գերեզ֊
26 մաններուն մէջ չթաղեցին ։ Եւ
անոր դէմ դաւաճանութիւն ընող֊
ները ասոնք էին․ Ամմոնացի կըն֊
կանը Սամեթին որդին՝ ղԶաբադը,
ու Մովաբացի կնկանը Սամարիթին
27 որդին՝ Յովզաբադը ։ Եւ անոր
որդւոցը համար, ու իր քովը Ձժող֊
վուած տուրքին շատութեանը հա֊
մար, ու Աստուծոյ տանը *նորո֊
գութեանը համար՝ ահա թագաւո֊
րաց գրքին յիշատակարանին մէջը
գրուած է ։ աՈւ անոր տեղը՝ ա֊
նոր որդին Ամասիան թագաւոր
եղաւ ։

## ԳԼ․ ԻԵ

1 Ամասիա իր թագաւորութեանը սկիզբը աղէկ վարմունք կ'ունենայ․ 3 դաւաճանութիւն ընողներուն արդար դատաստան կ'ընէ․ 5 Եդովմայեցւոց վրայ երթալու համար՝ Իսրայէլացիներէն զօրաց գունդ մը վարձքով կը բռնէ, սակայն մէկ մարգարէի մը խօսքով՝ իր տուած հարիւր տաղանդը կորսնցընելով, այն զօրքերը ետ կը ղրկէ․ 11 Եդովմայեցիները կը յաղթէ ։ 10, 13 Իսրայէլացիք՝ իրենց ետ ղրկուելուն վրայ նեղանալով՝ իրենց տուները դարձած ատեննին՝ Յուդայի քաղաքները կը կողոպտեն ։ 14 Ամասիա Եդովմի աստուածներուն կը ծառայէ, ու մարգարէին խրատը կ'անարգէ ։ 17 Յովասը գրգռելով՝ ինքը իր կործանմանը պատճառ կ'ըլլայ ։ 25 Ամասիային թագաւորութեանը օրերը ։ 27 Անոր դաւաճանութեամբ սպաննուիլը ։

ա Դ Թագ․ ԺԴ․ 1, ԵՒ ։
բ Տե՛ս Դ Թագ․ ԺԴ․ 4 ։ Հմր 14 ։
գ Դ Թագ․ ԺԴ․ 5, ԵՒ ։
դ Բ Օր․ ԻԴ․ 16 ։ Դ Թագ․ ԺԴ․ 6 ։ Երեմ․ ԼԱ․ 30 ։ Եզեկ․ ԺԲ․ 20 ։
ե Թուոց․ Ա․ 3 ։

1 Ամասիա աքսանըհինգ տարեկան
էր՝ երբոր թագաւոր եղաւ, ու
Երուսաղէմի մէջ քսանըինը տարի
թագաւորութիւն ըրաւ․ և անոր
մօրը անունը Յովադան էր, որ
2 Երուսաղեմացի էր ։ Եւ Տէրոջը
առջևը ուղղութիւն ըրաւ, բբայց
ոչ կատարեալ սրտով ։
3 գՈւ երբոր թագաւորութիւնը
անոր վրայ հաստատուեցաւ՝ իր
ծառաները մեռցուց, որոնք իր
հայրը թագաւորը սպաններ էին․
4 Բայց անոնց որդիքը չմեռցուց,
ինչպէս որ Մովսէսին օրինաց գըր֊
քին մէջը գրուած է, որ Տէրը պա֊
տուիրեց՝ ըսելով․ դՏղոց տղոցը֊
ներուն համար հայրերը չմեռցուին, ու
հայրերուն տղոցը֊ներուն համար տղաքը
չմեռցուին, հապա ամէն մարդ իր
յանցանքին համար պիտի մեռ֊
ցուի ։
5 Եւ Ամասիա Յուդան ժողվեց,
ու անոնց տոհմերուն վրայ հազա֊
րապետներ ու հարիւրապետներ
դրաւ՝ բոլոր Յուդայի ու Բենիա֊
մինի մէջ, և զանոնք եքսան տա֊
րեկանէն վեր համրեց, ու պատե֊
րազմի ելլող և նիզակ ու վահան
կրող իրեք հարիւր հազար ընտիր
6 զօրք գտաւ ։ Ու անիկայ հարիւր
տաղանդ արծաթով՝ Իսրայէլէն

հարիւր հազար զօրաւոր կտրիճ
7 վարձքով բռնեց ։ Եւ Աստուծոյ
մարդ մը եկաւ անոր՝ ու ըսաւ․
Ո՛վ թագաւոր՝ Իսրայէլի զօրքը
քեզի հետ չերթայ․ քանզի Տէրը
Իսրայէլի հետ՝ այսինքն բոլոր Եփրե֊
8 մի որդւոցը հետ չէ․ Բայց թէ որ
դուն երթալ կ'ուզես՝ գնա՛ ըրէ,
ու պատերազմի համար ուժովցիր,
բայց Աստուած թշնամիին առջևը
պիտի կործանէ քեզ․ քանզի ըօգ֊
նելու ու կործանելու զօրութիւնը
9 Աստուծոյ ձեռքն է ։ Եւ Ամասիա՝
Աստուծոյ մարդուն ըսաւ․ Հապա
ի՞նչպէս ընելու է այն հարիւր տա֊
ղանդը՝ որ ես Իսրայէլի զօրքին
տուի․ ու Աստուծոյ մարդը ըսաւ․
էՏէրը քեզի՝ անկէ աւելին կրնայ
10 տալ ։ Եւ Ամասիա՝ Եփրեմէն ի֊
րեն եկող գունդերը զատեց, որ
իրենց տեղը երթան․ ու անոնք
Յուդայի վրայ խիստ սրդողեցան,
ու սաստիկ բարկութեամբ իրենց
տեղը դարձան ։
11 Եւ Ամասիա ուժովցաւ, ու իր
զօրքը հանեց, ու Աղի ձորը գը֊
նաց․ և Սէիրի որդւոցմէ տասը հա֊
12 զարը զարկաւ, Ու տասը հազարն
ալ Յուդայի որդիքը ողջ դերի ա֊
ռին, և քարաժայռին գլուխը տա֊
րին, ու զանոնք քարաժայռին գըլ֊
խէն վար ձգեցին, ու ամէնքն ալ
կտոր կտոր եղան ։
13 Եւ այն զօրքերը՝ որոնք Ամասիա
ետ ղրկեց, որ իրեն հետ պատե֊
րազմի չերթան, Յուդայի քաղաք֊
ներուն վրայ յարձակեցան ; Սամա֊
րիայէն մինչև Բեթորոն, ու անոնց֊
մէ իրեք հազար հոգի մեռցուցին,
և շատ աւար առին ։
14 Ու երբոր Ամասիա Եդովմայեցի֊
ները զարնելէն դարձաւ, ըՍէիրի
որդւոցը աստուածները բերաւ․ ու
զանոնք կանգնեց, որ ժիրեն աս֊
տուածներ ըլլան․ և անոնց առջևը
երկրպագութիւն կ'ընէր, ու անոնց
15 խունկ կը ծխէր ։ Ու Տէրոջը բար֊
կութիւնը Ամասիային վրայ բոր֊
բոքեցաւ, և անոր մէկ մարգարէ մը
ղրկեց՝ ըսելով․ Դուն ինչո՞ւ փընտ֊
ռեցիր իայն ժողովուրդին աս֊
տուածները՝ որոնք նչկրցան իրենց
ժողովուրդը քու ձեռքէդ ազա֊
16 տել ։ Ու երբոր անոր հետ կը խօ֊
սէր, Թագաւորը ըսաւ անոր․ Միթէ
քեզ թագաւորի խորհրդական
դրին․ լռէ կեցիր, ՝լչըլլայ որ
քեզ զարնեն ։ Եւ մարգարէն լռեց․
ու ըսաւ․ Աղէկ գիտեմ որ Աս֊
տուած խորոշեր է քեզ կորսըն֊
ցընելու, որովհետև իմ խրա֊
տըս մտիկ չընելով՝ այս բանը ը֊
րիր ։

Ն․ Ք․ ԶՔ․
839

շ Գլ․ Ի․ 6 ։
է Առակ․ Ժ․ 22 ։
Իսր 827
ը Դ Թագ․ ԺԴ․ 7 ։
ր Տե՛ս Գլ․ ԻԸ․ 23 ։
ժ Ել․ Ի․ 3, 5 ։
ի Սաղ․ ՂԶ․ 5 ։ Լ Հմր 11 ։
լ Կամ՝ ինչո՞ւ
խ Դ Թագ․ Բ․ 25 ։

Ն․ Ք․ ԶՔ․ 826

ծ Դ Թագ․ ԺԴ․ 8, 9, Ճ․

17 Եւ ծ Յուդայի Ամասիա թագա-
ւորը խորհուրդ ըրաւ, ու Իսրայէ-
լի թագաւորին՝ Յէուի որդւոյն
Յովաքազի որդւոյն Յովասին մարդ
խրկեց՝ ըսելով. Եկո՛ւր. երես
18 երեսի տեսնուինք։ Եւ Իսրա-
յէլի Յովաս թագաւորը՝ Յու-
դայի Ամասիա թագաւորին մարդ
խրկեց ու ըսաւ. Լիբանանի փուշը՝
Լիբանանի եղևնափայտին պատգամ
խրկեց՝ ըսելով. Քու աղջիկդ իմ
տղուս կնիկ տուր. բայց Լիբանանի
մէջ եղող դաշտի գազանը անցաւ,
19 ու փուշը կոխկռտեց։ Դուն՝ Ա-
հա Եդովմը զարկի՝ ըսիր, ու քու
սիրտդ քեզ բարձրացընելով հպար-
տացուց. հիմա քու տունդ նստէ.
քանզի ինչո՞ւ համար չարութեան
խառնուիս, որ իյնաս դուն՝ ու քե-
20 զի հետ Յուդան ալ։ Բայց Ամասիա
մտիկ չըրաւ. քանզի ե ասիկայ Ա-
ստուծմէ եղաւ, որ զանոնք իրենց
թշնամիներուն ձեռքը մատնէ, զ Ե-
դովմայեցւոց աստուածները փնտռ-
21 ռելնուն համար։ Ուստի Իսրայէլի
Յովաս թագաւորը ելաւ. և ինքը
ու Յուդայի Ամասիա թագաւորը՝
Յուդայի Բեթսամիւսին մէջ երես
22 երեսի տեսնուեցան։ Եւ Յուդա՝
Իսրայէլէն առջևը յաղթուեցաւ,
ու ամէն մարդ իր վրանը փախաւ։

է Դ Թագ․ ԺԲ․ 15։ Գլ․ ԻԲ․ 7։ Հ Հմր 14։

23 Եւ Իսրայէլի Յովաս թագաւորը՝
յ Յովաքազի որդւոյն Յովասին որ-
դին Ամասիան՝ Յուդայի թագաւո-
րը՝ Բեթսամիւսի մէջ բռնեց, ու
զանիկայ Երուսաղէմ տարաւ. ու
Եփրեմի դռնէն մինչև Անկեան դու-
ռը՝ Երուսաղէմի պարսպին չորս հա-
24 րիւր կանգունը փլցուց։ Եւ բոլոր
ոսկին ու արծաթը, և Աստուծոյ
տանը մէջ գտնուած՝ Աբդեդոմին
քովի բոլոր ամանները, ու թագա-
ւորին տանը գանձերը առաւ, և
պատանդներ ալ առաւ, ու Սամա-
րիա դարձաւ։

յ Տես Գլ․ ԻԱ․ 17։ ԻԲ․ 1, 6։

25 Եւ Յուդայի թագաւորը ղ Յո-
վասի որդին Ամասիան՝ Իսրայէլի
թագաւորին՝ Յովաքազի որդւոյն
Յովասին մեռնելէն ետքը՝ տասնու-
26 հինգ տարի ապրեցաւ։ Ու Ամա-
սիային մնացորդ պատմութիւնը՝
առաջինը ու վերջինը՝ ահա Յուդայի
ու Իսրայէլի թագաւորներուն գըր-
27 քին մէջը գրուած է։ Եւ Ամասիա
երբոր Տէրոջը հետևելէն խոտորե-
ցաւ, անոր դէմ Երուսաղէմի մէջ
դաւաճանութիւն ըրին. ու անի-
կայ Լաքիս փախաւ. բայց անոր
ետևէն Լաքիսը մարդ խրկեցին, և
28 զանիկայ հոն մեռցուցին, Ու ձիե-
րով վերցուցին, ու զանիկայ իր
հայրերուն հետ *Յուդայի քաղա-
քին մէջը թաղեցին։

ղ Դ Թագ․ ԺԴ․ 17։ 810

810

* Կամ՝ Դաւիթի․ Դ Թագ․ ԺԴ․ 20։

ԳԼ․ ԻԶ

1 Ոզիա կը թագաւորէ, ու Զաքարիային օրերը Տէրոջը հետևելուն համար յաջողութիւն կը գտնէ. 16 Անիկայ հպարտութեամբ քահանայից պաշտօնին ձեռք կը զարնէ. անոր համար բորոտութեամբ կը պատժուի։ 22 Ոզիա կը մեռնի, ու Յովաթամ անոր տեղը կը յաջորդէ։

Ն․ Ք․ ԶՔ․ 810

1 Եւ բոլոր Յուդայի ժողովուրդը
ա Ոզիան առին, որ տասնուվեց
տարեկան էր, ու զանիկայ իր հօրը
Ամասիային տեղը թագաւոր դրին։
2 Ասիկայ Ելաթը շինեց, ու թագա-
ւորը իր հայրերուն հետ քնանալէն
ետքը՝ զանիկայ Յուդային ետ դար-
3 ձուց։ Ոզիա տասնուվեց տարեկան
էր՝ երբոր թագաւոր եղաւ, ու Ե-
րուսաղէմի մէջ յիսունուերկու տա-
րի թագաւորութիւն ըրաւ. և ա-
նոր մօրը անունը Յեքէլիա էր, որ
4 Երուսաղէմացի էր։ Եւ անիկայ
Տէրոջը առջևը ուղղութիւն ըրաւ,
իր հօրը Ամասիային բոլոր ըրածին
5 պէս։ Ու բ Աստուծոյ տեսիլքնե-
րուն հմուտ եղող Զաքարիային օ-
րերը՝ գ զԱստուած կը խնդրէր. և
Տէրը խնդրած օրերը՝ Աստուած ա-
6 նոր յաջողութիւն կու տար։ Ու
ելաւ դ Փղշտացւոց հետ պատե-
րազմ ըրաւ. և Գեթի պարիսպը,
Յաբնէի պարիսպը, ու Ազովտոսի
պարիսպը փլցուց. և Ազովտոսի
գաւառին մէջ՝ ու Փղշտացւոց ու-
րիշ երկիրներուն մէջ քաղաքներ շի-
7 նեց։ Եւ Աստուած անոր օգնու-
թիւն ըրաւ ե Փղշտացւոց դէմ, ու
Գուրբաաղը բնակող Արաբացւոց
8 դէմ, ու Մաոնացւոց դէմ, Եւ
Ամմոնացիք Ոզիային զ ընծաներ կու
տային. ու անոր անունը մինչև
Եգիպտոսի մուտքը տարածուեցաւ.
քանզի անիկայ խիստ ուժովցաւ։
9 Եւ Ոզիա Երուսաղէմի մէջ՝ է Ան-
կեան դրանը վրայ, ու ձորին դրա-
նը վրայ, և պարիսպին դարձուած-
քին վրայ աշտարակներ շինեց, ու
10 զանոնք ամրացուց։ Եւ անապա-
տին մէջ աշտարակներ շինեց, ու
շատ ջրհորներ փորեց. քանզի ա-
նիկայ դաշտի մէջ ու հովիտի մէջ
շատ անասուններ, ու լեռնակողմը՝
նաև Կարմեղոս լեռը՝ երկրագործ-
ներ ու այգեգործներ ունէր. քան-
զի երկրագործութիւնը կը սի-
11 րէր։ Եւ Ոզիա՝ Յէիէլ դպրա-
պետին ու Մաասիա ոստիկանին
ձեռքովը համրուած թուոյն համե-
մատ, թագաւորին իշխաններէն
Անանիային ձեռքին տակը՝ գուն-
դով պատերազմի ելլող զօրքեր ու-
12 նէր, Բոլոր զօրաւոր կտրիճներուն
տոհմապետներուն թիւը՝ երկու
13 հազար վեց հարիւր էր։ Եւ անոնց
ձեռքին տակը՝ իրեք հարիւր եօթը

ա Դ Թագ․ ԺԴ․ 21, 22։ ԺԵ․ 1, Ճ։

բ Ծն․ ԽԱ․ 15։ Դան․ Ա․ 17։ Բ․ 19։ Ժ․ 1։ գ Տես Գլ․ ԻԴ․ 2։ դ Ես․ ԺԴ․ 29։

ե Գլ․ ԻԱ․ 16։

զ Բ Թագ․ Ը․ 2։ Գլ․ ԺԷ․ 11։

է Դ Թագ․ ԺԴ․ 13։ Նեեմ․ Գ․ 13, 19, 32։ Զաք․ ԺԴ․ 10։

Ն. Ք. Ա. 810

հազար հինգ հարիւր պատերազմող
մարդ կար, որոնք մեծ ուժով կը
պատերազմէին, ու թշնամիին դէմ
թագաւորին օգնութիւն կ'ընէին։
14 Եւ Ոզիա անոնց բոլոր զօրքին համար՝
վահաններ, նիզակներ, սաղաւարտ-
ներ, զրահներ, աղեղներ, ու քա-
րերու համար պարսեր պատրաս-
15 տեց։ Ու անիկայ՝ Երուսաղէմի
մէջ՝ արուեստաւորներուն ճարտա-
րութեամբը մեքենաներ շինեց, որ
նետեր ու մեծ քարեր նետելու հա-
մար՝ աշտարակներուն վրայ և ան-
կիւններուն վրայ կենան. ու անոր
անունը հեռու տեղուանք տարա-
ծուեցաւ. վասն զի անիկայ զար-
մանալի օգնութիւններ գտաւ,

Իբր 765
ը Բ Օր. լբ. 15։
բ Բ Օր. ը. 14։ Գլ. իե. 19։
* Եբր. ապականութիւն

16 մինչև որ ուժովցաւ։ Բայց երբոր
ուժովցաւ, անոր սիրտը հպար-
տանալով՝ *չարութիւն ըրաւ, և
իր Տէր Աստուծոյն դէմ յանցանք
գործեց. ու գ Տէրոջը տաճարը
մտաւ, որ խունկի սեղանին վրայ

գ Դ Թագ. ժզ. 12, 13։
դ Ա Մն. զ. 10։

17 խունկ ծխէ։ Եւ անոր ետևէն դԱ-
զարիա քահանան մտաւ, ու անոր
հետ Տէրոջը ութսուն քահանանե-
րը՝ որոնք զօրաւոր մարդիկ էին.
18 Եւ անոնք Ոզիա թագաւորին դէմ
կեցան, ու անոր ըսին. Ո՛վ Ոզիա՝
քեզի չիյնար որ Տէրոջը խունկ

ե Թու. ժզ. 40։ ժը. 7։
ե Եւ. լ. 7, 8։

ծխես, հապա եԱհարոնեան քահա-
նաներուն՝ որոնք խունկ ծխելու
համար սրբուած են. սրբարանէն
դուրս ելիր. քանզի յանցանք գոր-
ծեցիր. ու ասիկա քեզի համար Տէր
Աստուծմէ պատիւ պիտի չըլլայ։
19 Եւ Ոզիա բարկացաւ. ու անոր
ձեռքը խունկ ծխելու համար բուր-
վառ կար. ու երբոր քահանանե-
րուն բարկացաւ, քահանանե-
րուն առջևը՝ Տէրոջը տանը մէջ
խունկի սեղանին քովը՝ անոր ճա-

զ Թու. ժբ. 10։ Դ Թագ. ե. 27։

կատին վրայ զբորոտութիւն երև-
20 ցաւ։ Եւ Ազարիա քահանայապե-
տը ու բոլոր քահանաները անոր
նայեցան, և ահա անոր ճակատին
վրայ բորոտութիւն կար. ու զա-
նիկայ շուտով անկէ հանեցին. ու

է Եսթ. զ. 12։

անիկայ ալ էելլելու արտորաց,
քանզի Տէրը զանիկայ զարկեր էր։

ը Դ Թագ. ժե. 5։
թ Ղև. ժգ. 46։ Թու. ե. 2։

21 ըԵւ Ոզիա թագաւորը մինչև իր
մահուան օրը բորոտած էր, ու
թզատ տան մը մէջ բորոտած կը
նստէր, վասն զի Տէրոջը տունէն
արգիլուեցաւ, ու անոր որդին Յո-
վաթամ՝ թագաւորին տանը վրայ
ըլլալով՝ երկրին ժողովուրդը կը
դատէր։
22 Եւ Ոզիային մնացորդ պատմու-

ժ Եսա. ա. 1։

թիւնը՝ առաջինը ու վերջինը՝ ժԱ-
մովսի որդին Եսայի մարգարէն գը-

ի Դ Թագ. ժե. 7։ Եսա. զ. 1։

23 րեց։ իԵւ Ոզիա իր հայրերուն հետ
քնացաւ, ու զանիկայ իր հայրե-
րուն հետ՝ թագաւորաց գերեզ-
մաններուն դաշտին մէջը թաղե-
ցին. վասն զի ըսին. Անիկայ բո-
րոտ է։ Եւ անոր որդին Յովաթամ
անոր տեղը թագաւորեց։

Ն. Ք. Ա. Իբր 765

## ԳԼ. ԻԷ

1 Յովաթամ բարի վարմունք ունենալով՝ կը յաջողի. 5 Ամմոնացիները կը հնազանդեցընէ։ 7 Յովաթամին թագաւորութեանը օրերը։ 9 Աքազ անոր տեղը կը յաջորդէ։

758
ա Դ Թագ. ժե. 32, Ճ։

1 Յովաթամ աքսանուհինգ տարե-
կան էր՝ երբոր թագաւոր եղաւ,
ու Երուսաղէմի մէջ տասնուվեց
տարի թագաւորութիւն ըրաւ. և
անոր մօրը անունը Յերուսա էր, ա-
2 Սադովկին աղջիկն էր։ Եւ իր հօրը
Ոզիային բոլոր ըրածին պէս՝ Տէրո-
ջը առջևը ուղղութիւն ըրաւ. բայց

բ Դ Թագ. ժե. 35։

Տէրոջը տաճարը չմտաւ. ու բժողո-
վուրդը տակաւին ապականած էր։
3 Անիկայ Տէրոջը տանը ամենէն բար-

գ Գլ. լգ. 14։ Նեեմ. գ. 26։

ձըր դուռը շինեց, ու գՈփաղի պա-
րըսպին վրայ շատ բաներ շինեց։
4 Եւ Յուդայի լեռնակողմը քաղաք-
ներ, ու անտառներու մէջ բերդեր
5 ու աշտարակներ շինեց։ Եւ անի-
կայ Ամմոնի որդւոցը թագաւորին
հետ պատերազմ ըրաւ, ու զանոնք
յաղթեց. և նոյն տարին Ամմոնի
որդիքը հարիւր տաղանդ արծաթ,
ու տասը հազար քոռ ցորեն, և
տասը հազար քոռ գարի տուին ա-
նոր. այսպէս երկրորդ ու երրորդ
տարին ալ Ամմոնի որդիքը բերին
6 անոր։ Եւ Յովաթամ զօրացաւ.
վասն զի իր ճամբաները իր Տէր
Աստուծոյն առջևը շիտկեց։
7 Ու Յովաթամին մնացորդ պատ-
մութիւնը, ու անոր բոլոր պատե-
րազմները, ու ճամբաները՝ ահա
Իսրայէլի ու Յուդայի թագաւորաց
8 գրքին մէջը գրուած է։ Անիկայ
թագաւոր եղած ատենը՝ քսանու-
հինգ տարեկան էր, ու տասնուվեց
տարի Երուսաղէմի մէջ թագաւո-

Իբր 742
դ Դ Թագ. ժե. 38։

9 րութիւն ըրաւ։ դԵւ Յովաթամ
իր հայրերուն հետ քնացաւ, ու
զանիկայ Դաւիթի քաղաքին մէջը
թաղեցին. և անոր որդին Աքազ
անոր տեղը թագաւորեց։

## ԳԼ. ԻԸ

1 Աքազ չար վարմունք ունենալով՝ Ասորինե-
րէն խիստ շատ նեղութիւն կը կրէ։ 6 Յու-
դայեանք Իսրայէլացիներէն գերի կը տա-
րուին, բայց Ովդեդ մարգարէին խրատովը
ետ կը խրկուին։ 16 Աքազ Ասորեստանի
թագաւորէն օգնութիւն կը խնդրէ. բայց
անկէ օգուտ մը չքաղեր։ 22 Իր նեղութեան
ատենը՝ ալ աւելի կռապաշտութեան կը հե-
տևի։ 26 Աքազ կը մեռնի, ու Եզեկիա ա-
նոր տեղը կը յաջորդէ։

741
ա Դ Թագ. ժզ. 2։

1 Աքազ աքսան տարեկան էր՝ երբոր
թագաւոր եղաւ, ու Երուսա-

741

ղէմի մէջ տասնուվեց տարի թա-
գաւորութիւն ըրաւ . և իր հօրը
Դաւիթին պէս՝ Տէրոջը առջեւ
2 ուղղութիւն չըրաւ . Հապա Իս-
րայէլի թագաւորաց ճամբաներուն
մէջ քալեց , ու Բաաղիմին ձու-
3 լածոյ կուռքեր շինեց ։ Եւ Են-
նոմի որդւոյն ձորին մէջը
խունկ կը ծխէր , ու իր որդիները
կրակով այրեց , ան ազգերուն գար-
շելի սովորութիւններուն համե-
մատ , որոնք Տէրը Իսրայէլի որ-
4 դւոցը առջեւէն վռնտեց ։ Եւ
բարձր տեղուանքը , ու բլուրներու
վրայ , և ամէն կանանչ ծառերու
տակ զոհ կը մատուցանէր , ու
խունկ կը ծխէր ։
5 Եւ անոր Տէր Աստուածը զանի-
կայ Ասորւոց թագաւորին ձեռքը
մատնեց . ու զանիկայ զարկին , և
անկէ խիստ շատ գերիներ առին ,
ու Դամասկոս տարին . նաև Իս-
րայէլի թագաւորին ձեռքը մատ-
նուեցաւ , որ զանիկայ մեծ հա-
6 րուածով զարկաւ ։ Եւ Ռոմելեայի
որդին Փակէէն՝ մէկ օրուան մէջ՝
Յուդայէն հարիւր քսան հազար
մարդ մեռցուց , որոնց ամէնն ալ
զօրաւոր կտրիճներ էին . քանզի
իրենց հայրերուն Տէր Աստուածը
7 թողուցեր էին ։ Ու Եփրեմէն՝
Զեքրի անունով զօրաւոր մարդ մը՝
թագաւորին որդին Մաասիան , և
պալատին հազարապետը Եզրիկա-
մը , ու թագաւորին փոխանորդը
8 Եղկանան մեռցուց ։ Եւ Իսրայէլի
որդիքը իրենց եղբայրներէն՝ կը-
նիկներ , տղաքներ , ու աղջիկներ՝
երկու հարիւր հազար գերի առին .
և անոնցմէ շատ աւարներ առին ,
ու աւարը Սամարիա տարին ։
9 Եւ հոն Տէրոջը մէկ մարգարէն
կար Ովդեդ անունով , որ Սամա-
րիա եկող զօրքին դիմացը ելաւ ,
ու անոնց ըսաւ . Ահա ձեր հայրե-
րուն Տէր Աստուածը Յուդայի վը-
րայ բարկանալուն համար՝ զանոնք
ձեր ձեռքը մատնեց . ու մեռցու-
ցիք զանոնք , այնպիսի բարկու-
թեամբ՝ որ մինչև երկինքը հա-
10 սաւ ։ Եւ հիմա կը մտածէք որ
Յուդայի ու Երուսաղէմի որդիքը՝
ձեզի ծառաներ ու աղախիններ
ընէք . չէ՞ որ ձեր Տէր Աստուծոյն
առջեւ միայն դուք յանցաւոր
11 կ'ըլլաք ։ Ու հիմա ինծի մտիկ
ըրէք , ու ետ դարձուցէք ան գե-
րիները՝ որոնք ձեր եղբայրներէն
առիք . քանզի Տէրոջը սաստիկ
12 բարկութիւնը ձեր վրայ է ։ Ու
Եփրեմի որդւոցը իշխաններէն Յո-
հանանի որդին Ազարիան , Մեսե-
ղամոթի որդին Բարաքիան , Եզ-
ղումի որդին Եզեկիան , ու Ադղիա-
յի որդին Ամեսային՝ պատերազմէն
13 եկողներուն դէմ կեցան , Եւ անոնց
ըսին . Գերիները հոս մի՛ բերէք .
քանզի դուք մեզ յանցաւոր ընել
կ'ուզէք Տէրոջը առջեւ , անոր
ու մեր մեղքերուն ու մեր յան-
ցանքներուն վրայ աւելցընելով .
ինչու որ մեր յանցանքը շատ է , ու
Իսրայէլի վրայ սաստիկ բարկու-
14 թիւն կայ ։ Ան ատենը պատերազ-
մականները՝ իշխաններուն ու բոլոր
ժողովքին առջեւը թողուցին գե-
15 րիները ու աւարը ։ Եւ իրենց ա-
նուններովը յիշուած մարդիկները
ելան , ու գերիները առին , ու բո-
լոր մերկ եղողները աւարէն հագ-
ցուցին . անոնց հանդերձներ ու
կօշիկներ հագցուցին , զանոնք
կերցուցին խմցուցին ու եղով
օծեցին , և բոլոր տկարները էշե-
րու վրայ հեծցընելով՝ Արմաւե-
նեաց քաղաքը՝ Երիքովը տարին
անոնց եղբայրներուն քովը , ու ի-
րենք Սամարիա դարձան ։
16 Ան ատենը Աքազ թագաւո-
րը Ասորեստանի թագաւորներուն
պատգամ խրկեց , որ իրեն օգնու-
17 թիւն ընեն . Վասն զի Եդովմայե-
ցիք նորէն եկեր էին , ու Յուդան
զարնելով՝ գերիներ տարեր էին ։
18 Փղշտացիք ալ՝ դաշտի մէջ ու
Յուդայի հարաւային կողմը եղող
քաղաքներուն վրայ յարձակելով՝
Բեթսամիւսը , Այեղոնը , Գադե-
րոթը , Սոքովը ու անոր գեղերը , և
Թամնան ու անոր գեղերը , և Գամ-
զովը ու անոր գեղերը առեր՝ ու
19 հոն բնակեր էին ։ Վասն զի Տէրը
Իսրայէլի թագաւորին Աքազին
պատճառաւը Յուդան նկուն ըրաւ .
որովհետև անիկայ Յուդան "գլխե-
հանեց" , ու Տէրոջմէ ապստամբե-
20 ցաւ ։ Եւ Ասորեստանի Թագղաթ
փաղասար թագաւորը անոր եկաւ ,
ու զանիկայ նեղեց . բայց անոր
21 օգնութիւն չըրաւ ։ Քանզի թէ-
պէտև Աքազ՝ Տէրոջը տունէն , ու
թագաւորին և իշխաններուն տու-
ներէն բաժիններ առաւ , ու Ա-
սորեստանի թագաւորին տուաւ ,
բայց անիկայ օգնութիւն չըրաւ ա-
նոր ։
22 Եւ իր նեղութեանը մէջ՝ ալ
աւելի Տէրոջը դէմ մեղք կը գոր-
ծէր . ասանկ մարդ մըն էր Աքազ
23 թագաւորը ։ Ու զանիկայ զոհեր
կը մատուցանէր Դամասկոսի աս-
տուածներուն՝ որոնք զինքը զարկեր
էին . քանզի ըսաւ . Ասորւոց թա-
գաւորներուն աստուածները՝ անոնց
օգնութիւն ընելուն համար՝ անոնց
զոհ մատուցանեմ , որ ինծի օգ-

741

740

Ն. Ք. Վ. Ք. 740

նութիւն ընեն . բայց անոնք՝ իրեն
ու բոլոր Իսրայէլին աւերմանը
24 պատճառ եղան ։ Եւ Աքազ Աս-
տուծոյ տանը անօթները ժողվեց ,
ու զանոնք կոտրեց , ւև Տէրոջը

ւ Տն. գլ. ԽԹ. 3, 7.

տանը դռները գոցեց , ու Երուսա-
ղէմին ամէն անկիւնները իրեն սե-
25 ղաններ շինեց ։ Եւ Յուդայի ամէն
քաղաքներուն մէջ բարձր տեղեր
շինեց , որ ուրիշ աստուածներու
խունկ ծխէ , ու իր հայրերուն Տէր
Աստուածը սրդողցուց ։

ա Գ Թագ. ԺԶ. 19, 20.

26 ա Եւ անոր մնացորդ պատմութիւ-
նը , ու բոլոր վարմունքը՝ առաջինը
ու վերջինը , ահա Յուդայի ու Իս-
րայէլի թագաւորներուն գրքին մէ-

726

27 ջը գրուած է ։ Եւ Աքազ իր հայ-
րերուն հետ քնացաւ . ու զանիկայ
Երուսաղէմ քաղաքին մէջը թաղե-
ցին . բայց Իսրայէլի թագաւորնե-
րուն գերեզմաններուն չտարին . և ա-
նոր որդին Եզեկիան անոր տեղը
թագաւոր եղաւ ։

ԳԼ. ԻԹ

1 Եզեկիային բարի թագաւորութիւնը ։ 3 Ա-
նիկայ բարեպաշտութիւնը նորէն կը հաստա-
տէ ։ 5 Ղեւտացիները կը յորդորէ ։ 12 Ա-
նոնք ալ իրենց անձը սրբելով՝ Տէրոջը տունը
կը մաքրեն ։ 20 Եզեկիա հանդիսաւոր զոհեր
կը մատուցանէ , ու այս գործին մէջ Ղեւտա-
ցիները աւելի յօժարասիրտ կը գտնուին քան
թէ քահանաները ։

726
ա Դ Թագ. ԺԸ. 1.
բ Գլ. ԻԶ. 5.

1 Եզեկիա ա քսանուհինգ տարեկան
էր՝ երբոր թագաւոր եղաւ , ու
Երուսաղէմի մէջ քսանուինը տարի
թագաւորութիւն ըրաւ . և անոր
մօրը անունը Աբիա էր , որ բ Զա-
2 քարիային աղջիկն էր ։ Եւ անիկայ
իր հօրը Դաւիթին բոլոր ըրածին
պէս՝ Տէրոջը առջևը ուղղութիւն
ըրաւ ։
3 Անիկայ իր թագաւորութեանը
առաջին տարւոյն առաջին ամիսը՝

գ Տն. գլ. ԻԸ. 24. Հմր 7.

գ Տէրոջը տանը դռները բացաւ , ու
4 զանոնք նորոգեց ։ Եւ քահանանե-
րը ու Ղեւտացիները բերել տուաւ ,
ու զանոնք արևելեան հրապարակին
5 մէջ ժողվեց , Եւ անոնց ըսաւ .
Ինծի մտիկ ըրէք՝ ով Ղեւտացիներ ,

դ ա Մն. ԺԵ. 12. Գլ. ԼԵ. 6.

դ հիմա սրբուեցէ՛ք , ու ձեր հարցը
Տէր Աստուծոյն տունը սրբեցէ՛ք ,
և պղծութիւնը սրբարանէն դուրս
6 հանեցէք . Քանզի մեր հայրերը
ապստամբեցան , ու մեր Տէր Աս-
տուծոյն առջևը չարութիւն ըրին ,

ե Երեմ. Բ. 27. Եզեկ. Ը. 16.
* Եբր. կռնակ դարձուցին .

ու զանիկայ թողուցին . և ե իրենց
երեսը Տէրոջը խորանէն դարձու-
ցին , ու * արհամարհեցին զանի-
7 կայ" . զ Սրահին դռներն ալ գոցե-

զ Գլ. ԻԸ. 24.

ցին , ճրագները մարեցին , խունկ
չծխեցին , ու սուրբ տեղը Իսրայէլի
Աստուծոյն ողջակէզ չմատուցին ։
8 Անոր համար Յուդային ու Երու-
սաղէմին վրայ է Տէրոջը բարկու-

Ն. Ք. Վ. Ք. 726

թիւնը եկաւ , ու զանոնք ը խռո-
վութեան , աւերման ու ր խայտա-
ռակութեան մէջ ձգեց , ինչպէս
որ հիմա ձեր աչքերովը կը տեսնէք ։

է Գլ. ԻԴ. 18. ը Օր. ԻԸ. 25.
ր Գ Թագ. Թ. Տ. Երեմ. ԺԸ. 16. ԺԹ. Տ. ԻԵ. 9. 18. ԻԹ. 18.

9 Եւ աս պատճառաւ ահա ժ մեր
հայրերը սրով ինկան . ու մեր տը-
ղաքները , և աղջիկները , ու կնիկ-
10 ները գերութեան մէջ են ։ Հիմա
իմ սրտիս մէջ փափաք ունիմ , որ
Իսրայէլի Տէր Աստուծոյն հետ

ժ Գլ. ԻԸ. 5. 6. Տ. 17.
է Գլ. ԺԵ. 12.

է ուխտ ընեմ , որպէս զի իր սաստիկ
բարկութիւնը մեզմէ դառնայ ։
11 Արդ՝ որդեակք իմ , անհոգութիւն
մի՛ ընէք . վասն զի Տէրը ւ ձեզ ընտ-

ւ Թուոց Գ. 6. Ը. 14. ԺԸ. 2, 6.

րեց , որ իրեն ծառայութիւն ը-
նելու համար՝ իր առջևը կայնիք ,
իրեն սպասաւորներ ըլլաք , ու
խունկ ծխէք ։
12 Ան ատենը ոտք ելան Ղեւտացի-
ները՝ Կահաթի որդւոցմէ
Ամեսայիի որդին Մաաթը , ու Ա-
զարիայի որդին Յովէլը . և Մերա-
րիի որդւոցմէ՝ Աբդիի որդին Կիսը ,
ու Յալէլէլի որդին Ազարիան . ու
Գերսոնեաններէն՝ Զամմայի որդին
Յովաքը , և Յովաքի որդին Եդե-
13 նը . Ու Եղիսափանի որդիներէն՝
Սամրի ու Յէիէլ . և Ասափի որ-
դիներէն՝ Զաքարիա ու Մաթա-
14 նիա . Ու Եմանի որդիներէն՝ Յե-
քիէլ ու Սեմէի . և Իդիթունի
որդիներէն՝ Սեմայիա ու Ոզիէլ .
15 Եւ իրենց եղբայրները ժողվեցին ու
է սրբուեցան . և թագաւորին հրա-

է Հմր 5. ծ Գլ. Լ. 12. ւ ա Մն. ԻԳ. 28.

մանովը ու ծ Տէրոջը խօսքովը՝ ւ Տէ-
16 րոջը տունը մաքրելու գացին ։ Եւ
քահանաները՝ մաքրելու համար՝
Տէրոջը տանը ներսի կողմը մտան ,
ու Տէրոջը տաճարին մէջ գտնուած
բոլոր աղտեղութիւնը՝ Տէրոջը տա-
նը գաւիթը հանեցին . ու Ղեւտա-
ցիները զանիկայ վերցուցին , որ
դուրսը՝ Կեդրոն հեղեղատը տա-
17 նին ։ Եւ առաջին ամսուն առա-
ջին օրը սկսան սրբել . ու ամսուն
ութերորդ օրը՝ Տէրոջը սրահը ե-
կան , ու Տէրոջը տունը ութ օ-
րուան մէջ սրբեցին . և առաջին
ամսուն տասնուվեցերորդ օրը լմնց-
18 ցուցին ։ Ու Եզեկիա թագաւորին
քովը գացին , ու ըսին . Տէրոջը
բոլոր տունը , ու ողջակէզի սեղա-
նը , ու անոր բոլոր գործիքները , և
առաջաւորութեան հացին սեղա-
նը , ու անոր բոլոր գործիքները
19 մաքրեցինք . Ու նաև պատրաստե-
ցինք ու սրբեցինք ան բոլոր ամաննե-
րը , որոնք Աքազ թագաւորը իր
թագաւորութեանը ու հ իր անօ-
րէնութեանը ատենը պղծեց . և ա-

հ Գլ. ԻԸ. 24.

հա անոնք Տէրոջը սեղանին առջևն
են ։

Ն. Ք. ՂՖ. 726

20 Ու Եզեկիա թագաւորը կանուխ
ելաւ, ու քաղաքին իշխանները
ժողվելով՝ Տէրոջը տունը գնաց.
21 Եւ ւթագաւորութեանը, ու
յսրբարանին, ու Յուդային համար՝
եօթը զուարակ, եօթը խոյ, ու
եօթը գառն, ու յմեղքի պատա-
րագ ըլլալու համար՝ եօթը նոխազ
բերին. և անիկայ Ահարոնի որդւո-
ցը՝ քահանաներուն հրամայեց, որ
զանոնք Տէրոջը սեղանին վրայ մա-
22 տուցանեն։ Ու զուարակները
մորթեցին, և քահանաները արիւ-
նը առին, ու ւսեղանին վրայ սրսկե-
ցին. և խոյերն ալ մորթեցին, ու
արիւնը սեղանին վրայ սրսկեցին.
և գառներն ալ մորթեցին, ու ա-
րիւնը սեղանին վրայ սրսկեցին։
23 Ու մեղքի պատարագի նոխազները՝
թագաւորին ու ժողովքին առջեւ
բերին. և անոնք ճձեռքերնին ա-
24 նոնց վրայ դրին։ Ու քահանանե-
րը զանոնք մորթեցին, և անոնց
արիւնը սեղանին վրայ *սրսկեցին
մբոլոր Իսրայէլին քաւութիւն ը-
նելու համար. վասն զի թագաւորը
ըսեր էր որ՝ ողջակէզը ու մեղքի
պատարագը բոլոր Իսրայէլին հա-
25 մար մատուցանեն։ յՈւ Ղեւտացի-
ները ծնծղաներով՝ տաւիղներով
ու քնարներով՝ Տէրոջը տանը մէջ
կայնեցուց, նինչպէս որ Դաւիթ,
ու շԴաւիթին թագաւորին տեսանո-
ղը Գադ, և Նաթան մարգարէն
պատուիրեր էին. ովասն զի Տէրը
իր մարգարէներուն ձեռքովը այս-
26 պէս հրամայեր էր։ Ու Ղեւտա-
ցիները՝ չԴաւիթին նուագարան-
ներովը՝ և քահանաները պփողե-
27 րով կայնեցան։ Ու Եզեկիա հրա-
մայեց որ ողջակէզը սեղանին վրայ
մատուցանեն. ու ողջակէզին սկսած
ատենը՝ ջՏէրոջը օրհնութիւնն ալ
փողերով, ու Իսրայէլի թա-
գաւորին Դաւիթին նուագարան-
28 ներովը սկսաւ։ Ու մինչև ող-
ջակէզին լմննալը՝ բոլոր ժողով-
քը երկրպագութիւն կ՚ընէր, եր-
գիչները օրհնութիւն կ՚երգէին,
և փողահարները փողերը կը հնչեցնէ-
29 ին։ Ու երբոր ողջակէզ մատու-
ցանելը լմնցուցին, ռթագաւորը և
բոլոր քովը գտնուողները ծռելով՝
30 երկրպագութիւն ըրին։ Ու Եզե-
կիա թագաւորը ու իշխանները
Ղեւտացւոց ըսին որ Տէրոջը օրհնու-
թիւն երգեն՝ Դաւիթին ու Ասափ
տեսանողին խօսքերովը. անոնք ալ
ուրախութեամբ երգեցին, ու խո-
նարհելով երկրպագութիւն ըրին։
31 Ու Եզեկիա պատասխան տուաւ,
ու ըսաւ. Հիմա ինքզինքնիդ Տէ-
րոջը նուիրեցիք. մօտեցէք, ու
Տէրոջը տունը զոհեր ու սօրհնու-
թեան ընծաներ բերէք։ Եւ ժողով-
քը զոհեր ու օրհնութեան ընծաներ
բերաւ. և ամէն յօժարութիւն
32 ունեցողը ողջակէզներ բերաւ։ Ու
ժողովքին բերած ողջակէզներուն
թիւը այս էր. եօթանասուն ար-
ջառ, հարիւր խոյ, ու երկու հա-
րիւր գառն. ասոնց ամէնը Տէրոջը
33 ողջակէզ ըլլալու համար էր։ Եւ
նուիրուածները վեց հարիւր ար-
ջառ, ու երեք հազար ոչխար էին։
34 Բայց քահանաները քիչուոր ըլլա-
լնուն համար՝ բոլոր ողջակէզներուն
մորթերը հանելու կարող չեղան.
ու մինչև այս գործին լմննալը, ու
մինչև միւս քահանաներուն սրբուի-
լը, վիրենց Ղեւտացի եղբայրները
իրենց օգնութիւն ըրին. տքանզի
Ղեւտացիք քահանաներէն աւելի
35 յօժարութեամբ սրբուեցան։ Ու
նաև ողջակէզները՝ խաղաղութեան
զոհերուն րճարպովը, և ողջակէզ-
ներուն ցթափելու նուէրներովը
մէկտեղ շատ էին։ Այսպէս Տէ-
րոջը տանը պաշտօնը կարգի դը-
36 րուեցաւ։ Եւ Եզեկիա և բոլոր
ժողովուրդը ուրախացան որ Աս-
տուած ժողովուրդը այնպէս պատ-
րաստեց. քանզի այս բանը յան-
կարծ եղաւ։

## ԳԼ. Լ

1 Եզեկիա կը հրամայէ՝ որ Յուդայեանք ու Իսրայէլացիք երկրորդ ամսուն մէջ հանդիսաւոր զատիկ ընեն։ 13 Բոլոր ժողովքը՝ կռապաշտութեան սեղանները կը կործանեն, ու տասնուչորս օր տօն կը պահեն։ 27 Քահանայք ու Ղեւտացիք ժողովուրդը կ՚օրհնեն։

1 Ու Եզեկիա բոլոր Իսրայէլին և
Յուդային մարդ ղրկեց. ու Եփ-
րեմին ու Մանասէին ալ նամակներ
գրեց, որ Երուսաղէմ Տէրոջը տու-
նը գան, ու Իսրայէլի Տէր Աստու-
2 ծոյն զատիկ ընեն։ Եւ թագա-
ւորը ու անոր իշխանները, ու բո-
լոր ժողովքը Երուսաղէմի մէջ խոր-
հուրդ ըրին, որ զատիկը աերկրորդ
3 ամսուն մէջ ընեն. Վասն զի բան
ատենը կարող չէին զանիկայ ընե-
լու. գինչու որ բաւական քահա-
նաներ սրբուած չէին, ու ժողո-
վուրդը Երուսաղէմ ժողվուած
4 չէր։ Եւ այս բանը թագաւորին
առջեւ՝ ու բոլոր ժողովքին առջեւ
5 հաճոյ երևցաւ. Ու այնպէս որոշե-
ցին, որ բոլոր Իսրայէլի մէջ՝ Բեր-
սաբէէն մինչև Դան լուր ղրկեն, որ
գան ու Երուսաղէմի մէջ Իսրայէլի
Տէր Աստուծոյն զատիկ ընեն.
քանզի շատ ատենէ ՚ի վեր գրուա-
ծին պէս ըրած չէին։
6 Եւ սուրհանդակները՝ թագաւո-

յ Ղև. դ. 3, 14.
ւ Ղև. ը. 14, 15, 19, 24. Եբր. թ. 21.
ճ Ղև. դ. 15, 24.
* Եբր. Մեղքի պատարագի պէս մատուցին
մ Ղև. ժդ. 20.
յ Ա Մն. ժզ. 4. իե. 6.
ն Ա Մն. իգ. 5. իե. 1. Գլ. ը. 14.
շ Բ Թագ. իդ. 11.
ո Գլ. Լ. 12.
չ Ա Մն. իգ. 5. Ամով. զ. 5.
պ Թուոց. ժ. 8, 10. Ա Մն. ժե. 24. ժզ. 6.
ջ Գլ. իդ. 18.
ռ Գլ. ի. 18.

Ն. Ք. ՂՖ. 726
ս Ղև. է. 12.
վ Գլ. լե. 11.
տ Գլ. Լ. 3.
ր Ղև. գ. 16.
ց Թուոց. ժե. 5, 7, 10.
ա Թուոց. թ. 10, 11.
բ Ել. ժբ. 6, 18.
գ Գլ. իթ. 34.

Ն. Ք. ԴՔ. 726

րին ու իշխաններուն նամակներովը
բոլոր Իսրայէլին ու Յուդային գա-
ցին, ու թագաւորին հրամանին
համեմատ ըսին. Ո՛վ Իսրայէլի որ-
դիք՝ Աբրահամին, Իսահակին ու
Իսրայէլին Տէր Աստուծոյն դար-
ձէք, ու ան ալ պիտի դառնայ ձե-
զի, որ Ասորեստանի թագաւոր-
ներուն ձեռքէն ազատելով՝ ձեր
7 մէջէն մնացեր էք։ Եւ ձեր հայ-
րերուն պէս, ու ձեր եղբայրներուն
պէս մի՛ ըլլաք, որոնք իրենց հայրե-
րուն Տէր Աստուծմէն ապստամբե-
ցան. ան ալ զանոնք կործանման
մատնեց, ինչպէս որ դուք կը տես-
8 նէք։ Ուրեմն ձեր հայրերուն պէս
ձեր պարանոցը մի՛ խստացնէք.
Տէրոջը հնազանդեցէք, ու եկէք
անոր սրբարանը՝ որն որ ինքը յա-
ւիտեան սրբած է. ու ձեր Տէր Աս-
տուծոյն ծառայութիւն ըրէք, որ
անոր սաստիկ բարկութիւնը ձեզ-
9 մէ դառնայ։ Քանզի թէ որ դուք
Տէրոջը դառնաք, ձեր եղբայրները
ու ձեր որդիքը՝ զիրենք գերի տա-
նողներուն երեսէն ողորմութիւն
պիտի գտնեն, և աս երկիրը պիտի
դառնան. ինչու որ ձեր Տէր Աս-
տուածը ողորմած ու գթած է.
ու թէ որ անոր դառնաք, ձեզմէ
երես պիտի չդարձնէ։
10 Եւ սուրհանդակները Եփրեմի ու
Մանասէի երկիրը՝ քաղաքէ քաղաք
պտըտելով, մինչև Զաբուղոն հա-
սան. բայց զանոնք ծաղր կ'ընէին
11 ու կ'արհամարհէին։ Սակայն Ա-
սերէն ու Մանասէէն՝ ու Զաբուղո-
նէն՝ ոմանք խոնարհեցան՝ ու Երու-
12 սաղէմ գացին։ Յուդայի վրայ ալ
Աստուծոյ ձեռքը կար, որ անոնց
մէկ սիրտ տայ, որպէս զի թագա-
ւորին ու իշխաններուն՝ Տէրոջը
խօսքին համեմատ պատուիրածը
կատարեն։
13 Ու Երուսաղէմի մէջ բազմաթիւ
ժողովուրդ հաւաքուեցաւ՝ երկրորդ
ամսուն մէջ բաղարջակերաց տօնը
կատարելու համար, որ խիստ մեծ
14 ժողովք մը եղաւ։ Եւ ելան՝ Ե-
րուսաղէմի մէջ եղող զոհի սե-
ղանները, ու բոլոր խունկի սեղան-
ները վերցուցին, ու Կեդրոն հեղե-
15 ղատը նետեցին։ Ու երկրորդ ամ-
սուն չորեքտասաներորդ օրը զատի-
կը մորթեցին. և քահանաները ու
Ղևտացիները ամչցան ու սրբուե-
ցան, ու Տէրոջը տունը ողջակէզներ
16 բերին։ Եւ Աստուծոյ մարդուն
Մովսէսին օրէնքին համեմատ՝ ի-
րենց սովորութեանը պէս՝ իրենց
տեղը կայնեցան. քահանաները
Ղևտացւոց ձեռքէն արիւնը կ'առ-
17 նէին ու կը սրսկէին։ Քանզի ժո-
ղովքին մէջ չսրբուածները շատ
էին. ու բոլոր մաքուր չեղող-
ներուն համար զատկի գառը Ղև-
տացիները կը մորթէին, որ զանոնք
18 Տէրոջը սրբեն։ Վասն զի ժողո-
վուրդին շատերը՝ մանաւանդ Եփրե-
մէն, Մանասէէն, Իսաքարէն ու
Զաբուղոնէն. անոնցմէ շատերը
մաքուր չէին. նայսու ամենայնիւ
զատիկը կերան, բայց չէ թէ գրուա-
ծին համեմատ. իսկ Եզեկիա անոնց
համար աղօթք ըրաւ՝ ու ըսաւ.
Բարերար Տէրը ասոր համար քա-
ւութիւն ընէ ան բոլոր մարդիկնե-
19 րուն՝ Որոնք սրտերնին ուղղեցին
Տէր Աստուածը՝ իրենց հայրերուն
Աստուածը փնտռելու, թէև ա-
նոնք սրբարանին մաքրութեանը
20 համեմատ մաքրուած չըլլան։ Եւ
Տէրը Եզեկիային մտիկ ըրաւ,
ու ժողովուրդին թողութիւն
տուաւ։
21 Ու Երուսաղէմի մէջ գտնուող
Իսրայէլի որդիքը մեծ ուրախու-
թեամբ՝ եօթը օր բաղարջակերաց
տօնը կատարեցին. ու Ղևտացինե-
րը և քահանաները ամէն օր բարձ-
րաձայն նուագարանները Տէրոջը
22 հնչեցնելով՝ Տէրը կ'օրհնէին։ Ու
Եզեկիա Ղևտացիներուն խօսե-
ցաւ՝ Տէրոջը բարի հանճարը իմա-
ցող բոլոր Ղևտացիներուն. և տօ-
նին եօթը օրը խաղաղութեան զո-
հեր մատուցանելով՝ ու իրենց
հայրերուն Տէր Աստուծոյն գոհու-
23 թիւն տալով՝ կ'ուտէին։ Եւ բոլոր
ժողովքը խորհուրդ ըրին որ ուրիշ
եօթը օր ալ տօն պահեն, ու եօթը
օր ալ մեծ ուրախութիւն ըրին։
24 Քանզի Յուդայի Եզեկիա թագա-
ւորը՝ ժողովքին հազար զուարակ
ու եօթը հազար ոչխար պարգևեց.
իշխաններն ալ ժողովքին հազար
զուարակ ու տասը հազար ոչխար
պարգևեցին. ու շատ քահանաներ
25 սրբուեցան։ Եւ բոլոր Յուդայի
ժողովքը, ու քահանաները, ու
Ղևտացիները, և Իսրայէլէն եկող-
ներուն բոլոր ժողովքը, ու Իսրա-
յէլի երկրէն եկող և Յուդայի մէջ
բնակող պանդուխտները ուրախա-
26 ցան։ Ու Երուսաղէմի մէջ մեծ ու-
րախութիւն եղաւ. քանզի Իսրա-
յէլի թագաւորին՝ Դաւիթի որ-
դւոյն Սողոմոնին օրերէն 'ի վեր Ե-
րուսաղէմի մէջ ասանկ ուրախու-
թիւն մը եղած չէր։
27 Անկէ ետքը Ղևտացի քահանա-
ները ելան՝ ու ժողովուրդը օրհնե-
ցին. և անոնց ձայնը լսուեցաւ.
ու անոնց աղօթքը՝ Աստուծոյ
սուրբ բնակարանը՝ երկինքը հա-
սաւ։

Երեմ. Գ. 1։ Յովել. Բ. 13։
Դ Թագ. ԺԵ. 19, 20։
Եզեկ. Ի. 18։
Գլ. ԻԹ. 8։
Բ Օր. Ժ. 16։
Տես Ա Մն. ԻԹ. 24։ Եզր. Ժ. 19։
Եբր. ձեռք տուէք
Գլ. ԻԹ. 10։
Սաղ. ՃՂ. 46։
Ել. ԼԴ. 6։ Եսա. ԾԵ. 7։
Գլ. ԼԶ. 16։
Գլ. ԺԱ. 16։ Հմր 18, 21։
Փիլ. Բ. 13։
Գլ. ԻԹ. 25։
Գլ. ԻԸ. 24։
Գլ. ԻԹ. 34։

Ն. Ք. ԴՔ. 726
Գլ. ԻԹ. 34։
Հմր 11։
Ել. ԺԲ. 43, ևն։
Գլ. ԺԹ. 3։
Եբր. ժողովուրդը բժշկեց։
Ել. ԺԲ. 15։ ԺԳ. 6։
Եսա. Խ. 2։
Կամ՝ սորվեցնող. Բ Օր. ԼԳ. 10։ Գլ. ԺԷ. 9։ ԼԵ. 3։
Եզր. Զ. 11։
Տես Գ Թագ. Ը. 65։
Գլ. ԼԵ. 7, 8։
Գլ. ԻԹ. 34։
Հմր 11, 18։
Թուոց. Զ. 23։
Սաղ. ԿԸ. 5։

Ն. Ք. ԱՌ.
726

## ԳԼ. ԼԱ

1 Ժողովուրդը յօժար կամօք՝ կռապաշտութիւնը կը կործանէ ։ 2 Եզեկիա կարգի կը դնէ քահանաներուն ու Ղևտացիներուն դասակարգութիւնները , ու անոնց գործքը ու ապրուստը կը հոգայ ։ 5 Ժողովուրդին յօժարամտութիւնը՝ զոհեր մատուցանելու ու տասանորդներ տալու համար ։ 11 Եզեկիա վերակացուներ կը դնէ տասանորդները բաժին ընելու համար ։ 20 Եզեկիային անկեղծ բարեպաշտութիւնը ։

1 Ու երբոր աս ամէնը լմնցաւ , հոն
գտնուող բոլոր Իսրայէլացիք
Յուդայի քաղաքները ելան , և բո-
լոր Յուդայի , Բենիամինի , Եփ-
ա Դ Թագ. ժը. 4 ։ Գլ. Լ. 14 ։
րեմի ու Մանասէի մէջ եղող ա ար-
ձանները կտոր կտոր ըրին , Աստա-
րովթի կուռքերը կտրեցին , և
բարձր տեղերը ու սեղանները
փլցուցին , անանկ որ՝ բան մը չթո-
ղուցին . ետքը Իսրայէլի որդիքը՝
ամէն մարդ իր ժառանգութիւնը՝
իրենց քաղաքները դարձան ։
բ Ա Մն. իգ. 6 ։ իդ. 1 ։
2 Ու Եզեկիա՝ բ քահանաներուն ու
Ղևտացիներուն դասերը հաստատեց
իրենց կարգերուն համեմատ , թէ
քահանաներուն և թէ Ղևտացինե-
րուն , ամէն մէկուն գործքին նայե-
գ Ա Մն. իգ. 30 , 31 ։
լով , գ ողջակէզներու ու խաղաղու-
թեան զոհերու համար , ու Տէրոջը
* Եբր. բանակին
* սրահներուն դռներուն մէջ՝ պաշ-
տելու , գովելու ու օրհնութիւն եր-
3 գելու համար ։ Նաև իր ստացուած-
քէն՝ ողջակէզներուն համար՝ թա-
դ Թու. իը. իթ ։
գաւորին դ Տէրոջը օրինաց գրքին մէջը
գրուածին պէս՝ առաւօտեան ու
երեկոյեան ողջակէզներուն համար ,
և շաբաթներուն՝ ու ամսագլուխ-
ներուն՝ ու հանդիսաւոր տօներուն
ողջակէզներուն համար թագաւո-
4 րին բաժինը որոշեց ։ Ու Երուսա-
ղէմի մէջ բնակող ժողովուրդին
ե Թու. ժը. Ը , ԻԱ ։ Նեեմ. ժգ. 10 ։
հրամայեց , որ ե քահանաներուն ու
Ղևտացիներուն բաժինը տան , որ-
պէս զի անոնք զ Տէրոջը օրէնքը պա-
զ Մաղ. Բ. 7 ։
5 հելու մէջ զօրանան ։ Ու երբոր
այս հրամանը հրատարակուեցաւ ,
Իսրայէլի որդիքը՝ է ցորենին , գի-
է Ել. իբ. 29 ։ Նեեմ. ժգ. 12 ։
նիին , եղին , մեղրին , և բոլոր ան-
դաստանաց բերքերուն երախայրի-
ները առատութեամբ բերին , ու
ամէն բանին տասանորդը առատա-
6 պէս բերին ։ Եւ Յուդայի քաղաք-
ներուն մէջը բնակող Իսրայէլի ու
Յուդայի որդիքը՝ անոնք ալ՝ ար-
ջառներուն ու ոչխարներուն տա-
սանորդները , և իրենց Տէր Աստու-
ծոյն նուիրած սուրբ բաներուն
ը Ղև. իէ. 30 ։ Բ Օր. ժդ. 28 ։
ը տասանորդները բերին , ու դիզե-
7 ցին ։ Անոնք երրորդ ամսուն մէջ
սկսան դիզել , և եօթներորդ ամ-
8 սուն մէջ լմնցուցին ։ Ու Եզեկիա
ու իշխանները եկան , ու երբոր ան
դէզերը տեսան՝ Տէրը ու անոր Իս-
9 րայէլ ժողովուրդը օրհնեցին ։ Ու
Եզեկիա ան դէզերուն համար՝ քա-
հանաներուն ու Ղևտացիներուն
10 հարցուց ։ Եւ Սադովկի տունէն
եղող մեծ քահանան Ազարիան՝ ա-
նոր պատասխան տուաւ , ու ըսաւ .
թ Մաղ. Գ. 10 ։
թ Քանի որ ընծաները Տէրոջը տունը
բերելու սկսան՝ կերանք , կշտա-
ցանք , ու խիստ շատ աւելցաւ .
վասն զի Տէրը իր ժողովուրդը օրհ-
նեց . ու աւելցածը աս մեծ դէզերն
11 է ։ Ու Եզեկիա հրամայեց որ Տէ-
րոջը տանը մէջ շտեմարաններ
պատրաստեն . ու պատրաստեցին .
12 Եւ ընծաները , ու տասանորդները ,
ու սուրբ բաները հաւատարմու-
ժ Նեեմ. ժգ. 13 ։
թեամբ ներս տարին . և ժ անոնց
վերակացուն՝ Ղևտացի Քոնոնիան
էր , ու անոր եղբայրը Սեմէի՝ անոր
13 փոխանորդն էր . Եւ Յեքիէլ , Ա-
զազիա , Նահաթ , Ասայէլ , Յերի-
մովթ , Յովզաբադ , Եղիէլ , Յես-
մաքիա , Մաաթ ու Բանեա՝ Քո-
նոնիային ու անոր եղբօրը Սեմէիին
ձեռքին տակը՝ Եզեկիա թագաւո-
րին , ու Տէրոջը տանը առաջնորդին
Ազարիային հրամանովը վերակա-
14 ցուներ էին ։ Եւ արևելեան կողմին
դռնապանը՝ Ղևտացի Յեմնայի որ-
դին Կովրէն՝ Տէրոջը բարձրացընելու
ընծաները , ու ամենասուրբ բանե-
րը բաժնելու համար՝ Աստուծոյ
15 կամաւոր ընծաներուն վրայ էր . Եւ
ի Յես. իա. 9 ։
անոր հրամանին տակը՝ ի քահանա-
յից քաղաքներուն մէջ՝ Եդենին ,
Մինիամինին , Յեսուին , Սեմայիա-
յին , Ամարիային ու Սեքենիային
յանձնուած էր , իրենց եղբայրնե-
րուն՝ մեծին ու պզտիկին դասա-
կարգութեանը նայելով՝ ընծաներ
16 բաժնելը . Նաև ազգահամարին մէ-
ջը գրուած իրեք տարուընէ վեր ե-
ղող բոլոր արուներուն՝ որոնք օրէ
օր Տէրոջը տունը կը մտնէին իրենց
պաշտօնութիւններուն մէջ՝ իրենց
դասակարգութեանցը համեմատ՝
իրենց ծառայութիւնը կատարելու
17 համար . Ու նաև ազգահամարին
մէջը գրուած քահանաներուն՝ ի-
րենց ազգատոհմներուն համեմատ ,
լ Ա Մն. իգ. 24 , 27 ։
ու լ քսան տարեկանէն վեր եղող
Ղևտացիներուն՝ իրենց պաշտօ-
նութեանցը ու իրենց դասակար-
18 գութիւններուն մէջ . Նաև ազ-
գահամարին մէջը գրուած անոնց
ամէն ընտանիքներուն՝ կնիկներուն ,
տղաքներուն ու աղջիկներուն ,
այսինքն՝ անոնց բոլոր ժողովքին .
քանզի հաւատարմութեամբ կը
19 սրբուէին ։ Եւ անոնց քաղաքնե-
խ Ղև. իե. 34 ։ Թու. լե. 2 ։
րուն խ արուարձանաց արտերուն մէ-
ջը եղող Ահարոնի որդւոցը քահա-
նաներուն համար՝ ամէն քաղաքի

Ն. Ք. ԴՔ. 726

ծ Հմր 12, 13, 14, 15 ։

մէջ ծերէնդ անուններովը յիշուած
մարդիկներ կային, որոնք քահա-
նայից բոլոր արուներուն ու Ղև-
տացւոց ազգահամարին մէջը բոլոր
գրուածներուն բաժիններ կու տա-
20 յին ։ Ու Եզեկիա բոլոր Յուդայի
մէջ այսպէս ըրաւ, և իր Տէր Աս-
տուծոյն առջևը կբարի, ուղիղ ու
ճշմարիտ եղածը ըրաւ ։

կ Դ Թագ. Ի. 3 ։

21 Եւ իր ամէն ձեռք զարկած գոր-
ծը՝ թէ Աստուծոյ տանը ծառա-
յութեանը համար, և թէ օրէնքին
ու պատուիրանքին համար, իր բո-
լոր սրտովը իր Աստուածը փնտռե-
լով ըրաւ, ու յաջողեցաւ ։

## ԳԼ. ԼԲ

5 Սենեքերիմ Յուդայի վրայ կը յարձակի. իսկ Եզեկիա սիրտը ամուր բռնելով՝ իր ժողովուրդը կը քաջալերէ ։ 9 Սենեքերիմին՝ թէ՛ պատգամաւորներու միջոցով և թէ գրուածքով ըրած հայհոյութեանցը դէմ, Եզեկիա ու Եսայի աղօթք կ՚ընեն ։ 21 Հրեշտակ մը Ասորեստանի բանակը բնաջինջ կ՚ընէ ։ 24 Եզեկիա՝ իր հիւանդութեանը ատենը աղօթելով՝ Աստուած անոր առողջանալուն նշան մը կու տայ ։ 25 Եզեկիա կը հպարտանայ, բայց Աստուծով կը խոնարհի ։ 27 Անոր հարստութիւնը ու գործքերը. 31 անոր յանցանքը՝ Բաբիլոնի դեսպաններուն եկած ատենը ։ 32 Եզեկիա մեռնելով՝ Մանասէն անոր տեղը կը յաջորդէ ։

713

ա Դ Թագ. ԺԸ. 13, Ա. ։ Ես. ԼԶ. 1, Ա.

* Կամ՝ հաւատարմութեամբ ըրած գործքերէն

1 ա Այս *բաներէն ու աս ճշմարտու-
թենէն՝՝ ետքը՝ Ասորեստանի
Սենեքերիմ թագաւորը եկաւ, ու
Յուդայի երկիրը մտնելով, պարիս-
պաւոր քաղաքներուն դէմը բանա-
կեցաւ, ու միտքը դրած էր որ զա-
նոնք բռնութեամբ իրեն առնէ ։
2 Ու Եզեկիա տեսնելով որ Սենեքե-
րիմ եկեր է, ու Երուսաղէմի դէմ
3 պատերազմիլ կ՚ուզէ, Իր իշխան-
ներուն ու զօրաւորներուն հետ
խորհուրդ ըրաւ, որ քաղաքէն դուրս
եղող աղբիւրներուն ջուրերը գոցէ.
և անոնք անոր օգնութիւն ըրին ։
4 Ու խիստ շատ ժողովուրդ ժողվուե-
ցաւ, ու բոլոր աղբիւրները ու երկ-
րին մէջէն անցնող հեղեղատը գո-
ցեցին՝ ըսելով. Ինչո՞ւ համար Ա-
սորեստանի թագաւորները գան,
5 ու առատ ջուր գտնեն ։ Ու բԵ-
զեկիա զինքը ուժովցուց. գև ա-
մէն փլած պարիսպները շինեց,
ու աշտարակները բարձրացուց, ու
դուրսէն մէկ ուրիշ պարիսպ մըն
ալ շինեց. և Դաւիթի քաղաքին
մէջը եղող դՄելոնը նորոգեց. ու
շատ †նիզակներ ու ասպարներ շի-
6 նեց ։ Եւ ժողովուրդին վրայ պա-
տերազմի զօրապետներ դրաւ, ու
զանոնք քաղաքին դրանը հրապա-
րակին մէջ իր քովը ժողվեց, և
անոնց հետ եքաղցրութեամբ խօ-
7 սեցաւ՝ ըսելով. զԶօրացէ՛ք ու քա-
ջասիրտ եղէք. Ասորեստանի թա-

բ Ես. ԻԲ. 9, 10 ։

գ Գլ. ԻԵ. 23 ։

դ Բ Թագ. Ե. 9 ։ Գ Թագ. Թ. 24 ։

† Կամ՝ սուրեր

ե Գլ. Լ. 22 ։ Ես. Խ. 2 ։

զ Բ Օր. Լա. 6 ։

գաւորին երեսէն, ու անոր հետը
եղող բոլոր բազմութեանը երեսէն
էմի՛ վախնաք ու մի՛ զարհուրիք.
վասն զի ըմեզի հետ եղողները՝ ա-
նոր հետ եղողներէն շատուոր են՝ ։
8 Անոր հետ թմարմնեղէն բազուկ
կայ, բայց ժմեզի հետ եղողը՝ մեր
Տէր Աստուածն է, որ պիտի օգնէ
մեզի, ու մեր ‡պատերազմներուն
մէջ առաջնորդութիւն պիտի ընէ՝՝ ։
Եւ ժողովուրդը Յուդայի Եզեկիա
թագաւորին խօսքերէն սիրտ ա-
ռաւ ։
9 իԱսկէ ետև Ասորեստանի Սենե-
քերիմ թագաւորը, երբոր ինքը
ու իր բոլոր ‖իշխանները Լաքիսի
վրայ էին, իր ծառաները Երուսա-
ղէմ խրկեց Յուդայի Եզեկիա թա-
գաւորին ու Երուսաղէմ եղող
10 բոլոր Յուդային՝ ըսելով. լԱսո-
րեստանի Սենեքերիմ թագաւորը
այսպէս կ՚ըսէ. Դուք որո՞ւն ապա-
ւինելով՝ Երուսաղէմ §պաշարման
11 մէջ կը նստիք. Չէ՞ որ Եզեկիան
ձեզ գլխէ կը հանէ, որ ձեզ անօ-
թութեամբ ու ծարաւով մեռնե-
լու մատնէ, ըսելով թէ՝ խՄեր Տէր
Աստուածը մեզ Ասորեստանի թա-
գաւորին ձեռքէն պիտի ազատէ ։
12 ծԱսիկայ նոյն Եզեկիան չէ՞, որ ա-
նոր բարձր տեղերը ու սեղանները
վերցուց, և Յուդայի ու Երուսա-
ղէմի բնակիչներուն ըսաւ. Մինակ
մէկ սեղանին առջևը երկրպագու-
թիւն ըրէք, ու անոր վրայ խունկ
13 ծխեցէք ։ Չէ՞ք գիտեր թէ երկիր-
ներուն ամէն ժողովուրդը ինչ
ըրի ես՝ ու իմ հայրերս. միթէ ան
երկիրներուն կազգաց աստուածնե-
րը՝ իրենց երկիրները կրցա՞ն իմ
14 ձեռքէս ազատել ։ Իմ հայրե-
րուս բնաջինջ ըրած ազգերուն բո-
լոր աստուածներուն ո՞րը իր ժողո-
վուրդը իմ ձեռքէս ազատելու
կարող եղաւ, որ ձեր Աստուածը
ձեզ իմ ձեռքէս ազատելու կա-
15 րող ըլլայ ։ Եւ հիմա հԵզեկիան
ձեզ չխաբէ, ու ձեզ այդպէս գըլ-
խէ չհանէ. անոր մի՛ հաւատաք.
վասն զի ազգի մը կամ թագա-
ւորութեան մը բնաւ մէկ աս-
տուածը իր ժողովուրդը իմ ձեռ-
քէս, ու իմ հայրերուս ձեռքէն
չկրցաւ ազատել. ո՞ւր մնաց որ
ձեր Աստուածը ձեզ իմ ձեռքէս
16 ազատէ ։ Եւ անոր ծառաները Տէր
Աստուծոյ դէմ, ու անոր ծառային
Եզեկիային դէմ աւելի խօսքեր ալ
17 ըսին ։ Եւ Սենեքերիմ նախատելու Տէր
Աստուածը հայհոյելով ու անոր
դէմ խօսելով ձնամակ գրեց ու ը-
սաւ. ղԻնչպէս որ երկիրներուն
ազգաց աստուածները իրենց ժողո-

Ն. Ք. ԴՔ. 713

է Գլ. Ի. 15 ։ ը Դ Թագ. Զ. 16 ։

թ Երեմ. ԺԷ. 5 ։ ա Յով. Դ. 4 ։

ժ Գլ. ԺԴ. 12 ։ Հռով. Ը. 31 ։

‡ Եբր. պատերազմնե՛րը պիտի պատերազմի ։

710

ի Դ Թագ. ԺԸ. 17 ։

‖ Կամ՝ զօրքը

լ Դ Թագ. ԺԸ. 19 ։

§ Կամ՝ ամրոցին

խ Դ Թագ. ԺԸ. 30 ։

ծ Դ Թագ. ԺԸ. 22 ։

կ Դ Թագ. ԺԸ. 33, 34, 35 ։

հ Դ Թագ. ԺԸ. 29 ։

ձ Դ Թագ. ԺԹ. 9 ։

ղ Դ Թագ. ԺԹ. 12 ։

Ն · Ք · ՂՖ · 710

Ճ Դ Թագ · ԺԲ · 26 · 27 · 28 ·
Մ Դ Թագ · ԺԲ · 28 ·
Յ Դ Թագ · ԺԹ · 18 ·
Ն Դ Թագ · ԺԹ · 15 ·
Շ Դ Թագ · ԺԹ · 2 · 4 ·
Իբր 710
Ո Դ Թագ · ԺԹ · 35, Ա. ·
710
Չ Գլ · ԺԷ · 5 ·
Պ Գլ · Ա · 1 ·
713
Ջ Դ Թագ · Ի · 1 · Ես · ԼԸ · 1 ·
* Կամ՝ Հրաշալի նշան մը տուաւ
Ռ Սաղ · ճԺԶ · 12 ·
Ս Գլ · ԻԶ · 16 · Ամբ · Բ · 4 ·
Վ Գլ · ԻԴ · 18 ·
Տ Երեմ · ԻԶ · 18 · 19 ·
Ր Դ Թագ · Ի · 19 ·

վուրդները իմ ձեռքէս չկրցան ա-
զատել , այնպէս ալ Եզեկիային
Աստուածը իր ժողովուրդը իմ
18 ձեռքէս պիտի չազատէ ։ Եւ պա-
րըսպին վրայ եղող Երուսաղէմի
ժողովուրդին բարձր ձայնով Եբ-
րայեցերէն պոռացին , զանոնք
վախցընելու , ու շփոթութեան
մէջ ձգելու համար , որ քաղաքը
19 առնեն ։ Ու Երուսաղէմի Աստու-
ծոյն դէմ խօսեցան , իբրև երկրի
ժողովրդոց աստուածներուն դէմ ,
որոնք մարդու ձեռագործ էն ։
20 Ու Եզեկիա թագաւորը , և
Ամովսի որդին Եսայի մարգարէն
աս բանիս համար դէպ 'ի երկինքը
21 աղաղակելով՝ աղօթք ըրին ։ Եւ
Տէրը հրեշտակ մը խրկեց , ու Ա-
սորեստանի թագաւորին բանակին
մէջը՝ ամէն զօրաւոր կտրիճը , ու
իշխանը , ու զօրագլուխը զարկաւ .
և անիկայ ամօթով իր երկիրը
դարձաւ . ու իր աստուծոյն տունը
մտաւ . և իր երանքէն ելած որդիքը
զանիկայ հոն սրով մեռցուցին ։
22 Այսպէս Տէրը Եզեկիան ու Երու-
սաղէմի բնակիչները Ասորեստանի
Սենեքերիմ թագաւորին ձեռքէն ,
և ամենուն ձեռքէն ազատեց , ու
զանոնք ամէն կողմանէ պաշտպա-
23 նեց ։ Եւ շատերը Տէրոջը ընծա-
ներ կը բերէին Երուսաղէմ , ու
Յուդայի Եզեկիա թագաւորին ալ
պատուական բաներ . ու անկէ
ետքը անիկայ բոլոր ազգերուն առ-
ջևը բարձրացաւ ։
24 Այն օրերը Եզեկիա մահուան
աստիճանը հիւանդացաւ , ու Տէ-
րոջը աղօթք ըրաւ . և Անիկայ
պատասխան տուաւ , ու * հրաշք
25 մը ըրաւ" անոր ։ Ու Եզեկիա իր
ընդունած բարիքին փոխարէն շնոր-
հակալութիւն չմատուց . վասն զի
անոր սիրտը հպարտացաւ . ուս-
տի անոր վրայ ու Յուդայի ու Ե-
րուսաղէմի վրայ բարկութիւն ե-
26 կաւ ։ Բայց Եզեկիա իր սրտին
հպարտութեանը համար խոնար-
հեցաւ , թէ ինքը և թէ Երուսա-
ղէմի բնակիչները . անոր համար
Տէրոջը բարկութիւնը Եզեկիա-
յին օրերը անոնց վրայ չեկաւ ։
27 Ու Եզեկիա խիստ շատ հարըս-
տութիւն ու փառք ունեցաւ . և
անիկայ իրեն՝ արծաթի , ոսկիի ,
պատուական քարերու , խունկե-
րու , ասպարներու , ու ամէն տե-
սակ ցանկալի անօթներու համար
28 գանձարաններ շինեց . Եւ ցորենի ,
ու գինիի , ու եղի բերքերուն հա-
մար շտեմարաններ , և ամէն տեսակ
անասուններու համար ախոռներ ,
ու հօտերու համար փարախներ շի-
29 նեց ։ Եւ քաղաքներ շինեց իրեն ,
ու շատ ոչխարներ ու արջառներ
ստացաւ . վասն զի Աստուած
խիստ շատ ստացուածք տուաւ ա-
30 նոր ։ Եւ աս Եզեկիան Գեհոնին
վերի ջրանցքը գոցեց , ու զանիկայ
դէպ 'ի վար՝ Դաւիթի քաղաքին
արևմտեան կողմը ուղղեց . ու Ե-
զեկիա իր բոլոր գործքերուն մէջ
յաջողութիւն գտաւ ։
31 Բայց երբոր Բաբիլոնի իշխանաց
դեսպանները անոր խրկուեցան՝
երկրին մէջը եղած հրաշքը հարցը-
նելու համար , Աստուած զանիկայ
թողուց , որ փորձէ ու բոլոր ա-
նոր սրտին մէջ եղածը գիտնայ ։
32 Ու Եզեկիային մնացորդ պատ-
մութիւնը , ու անոր բարեպաշտու-
թիւնը՝ ահա Ամովսի որդւոյն Ե-
սայի մարգարէին մարգարէու-
թեանը մէջ՝ և Յուդայի ու Իսրա-
յէլի թագաւորներուն գրքին մէջ
33 գրուած է ։ Ու Եզեկիա իր հայ-
րերուն հետ քնացաւ . ու զանիկայ
Դաւիթի որդւոցը պինտ բարձր
գերեզմաններուն մէջը թաղեցին .
և բոլոր Յուդան ու Երուսաղէմի
բնակիչները պատիւ ըրին անոր՝
իր մահուան ատենը . ու անոր տե-
ղը՝ անոր որդին Մանասէն թա-
գաւոր եղաւ ։

## ԳԼ · ԼԳ

1 Մանասէին չար վարմունքը ։ 3 Անիկայ կռապաշտութիւնը կը հաստատէ , ու խրատ ընդունիլ չուզեր ։ 11 Մանասէ Բաբիլոն կը տարուի . 12 ու հոն Աստուծոյ աղօթելով՝ գերութենէ կ'ազատուի . ու կը դառնայ կռապաշտութիւնը կը կործանէ ։ 18 Անոր գործքերը ։ 20 Մանասէ մեռնելով Ամոն անոր տեղը կ'անցնի ։ 21 Ամոնին չար վարմունքը ու իր ծառաներէն սպաննուիլը ։ 25 Ժողովուրդը ան սպաննող մարդիկը կը մեռցընեն ու Յովսիան թագաւոր կ'ընեն ։

1 Մանասէ տասուերկու տարեկան
էր՝ երբոր թագաւոր եղաւ ,
ու Երուսաղէմի մէջ յիսունուհինգ
տարի թագաւորութիւն ըրաւ ։
2 Եւ անիկայ Տէրոջը Իսրայէլի որ-
դւոցը առջևէն վռնտած ազգե-
րուն գարշելի գործքերուն պէս՝
Տէրոջը առջևը չարութիւն ըրաւ ։
3 Ու անիկայ իր հօրը Եզեկիային
կործանած բարձր տեղուանքը նո-
րէն շինեց , ու Բահաղիմին սեղան-
ներ կանգնեց , և Աստարովթի
կուռքեր շինեց . ու երկինքին բո-
լոր զօրութիւններուն երկրպագու-
թիւն ըրաւ , և անոնց ծառայու-
4 թիւն ըրաւ . Ու սեղաններ շինեց
Տէրոջը տանը մէջ , որուն համար
Տէրը ըսած էր թէ՝ Իմ անունս
յաւիտեան Երուսաղէմի մէջ պիտի
5 ըլլայ ։ Ու Տէրոջը տանը երկու
գաւիթներուն մէջ՝ երկինքի բոլոր

Ն · Ք · ՂՖ · 713
Ց Ա Մն · ԻԹ · 12 ·
Ւ Ես · ԻԲ · 9 · 11 ·
712
Փ Դ Թագ · Ի · 12 · Ես · ԼԹ · 1 ·
Ք Բ Օր · Ը · 2 ·
Օ Ես · ԼԶ · ԼԷ · ԼԸ · ԼԹ ·
Ֆ Դ Թագ · ԺԸ · ԺԹ · Ի ·
Ա Դ Թագ · Ի · 21 ·
Բ Առակ · Ժ · 7 ·
698
Ա Դ Թագ · ԻԱ · 1, Ա. ·
Բ Բ Օր · ԺԸ · 9 · Բ Մն · ԻԸ · 3 ·
Գ Դ Թագ · ԺԸ · 4 · Գլ · Լ · 14 · ԼԱ · 1 · ԼԲ · 12 ·
Դ Բ Օր · ԺԶ · 21 ·
Ե Բ Օր · ԺԷ · 3 ·
Զ Բ Օր · ԺԲ · 11 · Գ Թագ · Ը · 29 · Թ · 3 · Գլ · Զ · 6 · Է · 16 ·
Է Գլ · Դ · 9 ·

զօրութիւններուն սեղաններ շի-
6 նեց · Եւ անիկայ Ենովմի որդւոյն
ձորին մէջը [ը]իր որդիները կրակէ
անցուց , [թ]ու գուշակութիւն ,
հմայութիւն և դիւթութիւն կ'ը-
նէր · և [ժ]վհուկներ ու նշանագէտ-
ներ ունէր · և Տէրոջը առջևը շատ
չարութիւն ըրաւ , ու զանիկայ
7 բարկացուց ։ Եւ [ի]իր շինած քան-
դակեալ կուռքը Աստուծոյ տանը
դրաւ , որուն համար Աստուած՝
Դաւիթին ու անոր որդւոյն Սողո-
մոնին ըսեր էր · [լ]Իմ անունս Յաւ-
տեանս մէջ , ու Իսրայէլի բոլոր ցե-
ղերէն իմ ընտրած Երուսաղէմիս
8 մէջ պիտի դնեմ յաւիտեան · [խ]Եւ
Իսրայէլին ոտքը մէյմըն ալ պիտի
չշարժեմ այս երկրէն , որուն մէջ
ձեր հայրերը հաստատեցի · միայն
թէ անոնք զգուշութեամբ 'ի գործ
դնեն ան բոլոր օրէնքը , կանոնները
ու դատաստանները՝ որոնք Մով-
սէսին ձեռքովը անոնց պատուիրե-
9 ցի ։ Բայց Մանասէ՝ Յուդան ու
Երուսաղէմի բնակիչները այնպէս
մոլորցուց , որ Տէրոջը Իսրայէլի
որդւոցը առջևէն կորսնցուցած
ազգերէն աւելի չարութիւն ըրին ։
10 Եւ Տէրը Մանասէին ու անոր ժո-
ղովուրդին խօսեցաւ · բայց ա-
նոնք միտք չըրին ։
11 [ծ]Եւ Տէրը անոնց վրայ՝ Ասորես-
տանի թագաւորին զօրագլուխները
բերաւ · ու Մանասէն *կապերով
բռնեցին , և [կ]զանիկայ ոտնակապե-
րով կապեցին , ու Բաբելոն տա-
12 րին ։ Ու անիկայ իր նեղութեան
ատենը՝ իր Տէր Աստուծոյն երեսը
խնդրեց , և իր հայրերուն Աստու-
ծոյն առջևը [հ]մեծապէս խոնարհե-
13 ցաւ , Ու անոր աղօթք ըրաւ · և
Տէրը [ձ]անոր աղօթքը ընդունեց , ու
աղաչանքը լսեց , ու զանիկայ Ե-
րուսաղէմ՝ իր թագաւորութեանը
դարձուց ։ Ան ատենը Մանասէ
[ղ]իմացաւ որ Եհովան է Աստուա-
14 ծը ։ Եւ ասկէ ետքը Դաւիթի
քաղաքին դուրսը՝ [ճ]Գեհոնին ա-
րևմտեան կողմը հեղեղատին մէջ՝
ու մինչև Ձկանց դրանը բերանը մէկ
պարիսպ մը շինեց , [մ]Ոփաղն ալ
մէջը առնելով ; ու զանիկայ շատ
բարձրացուց , և Յուդայի բոլոր
պարսպաւոր քաղաքներուն մէջ
15 զօրքի իշխաններ դրաւ ։ Ու [յ]օ-
տար աստուածները ու կուռքը՝
Տէրոջը տունէն վերցուց , ու Տէ-
րոջը տանը լեռանը վրայ , ու Երու-
սաղէմի մէջ իր շինած բոլոր սե-
ղանները վերցուց , և քաղաքէն
16 դուրս նետեց ։ Ու Տէրոջը սեղա-
նը շինեց · և անոր վրայ խաղաղու-
թեան ու [ն]շնորհակալութեան զօ-
հեր մատուց · և Յուդային պա-
տուիրեց որ Իսրայէլի Տէր Աս-
տուծոյն ծառայութիւն ընեն ։
17 [ա]Սակայն ժողովուրդը տակաւին
բարձր տեղերու վրայ զոհ կը մա-
տուցանէին , բայց միայն իրենց Տէր
Աստուծոյն ։
18 Եւ Մանասէին մնացորդ պատ-
մութիւնը , ու իր Աստուծոյն ը-
րած աղօթքը , ու Իսրայէլի Տէր
Աստուծոյն անունովը անոր խօ-
սող [բ]†տեսանողներուն խօսքերը՝
ահա Իսրայէլի թագաւորներուն
յիշատակաց գրքին մէջը գրուած
19 է ։ Ու անոր աղօթքը , և ըն-
դունուիլը , ու անոր բոլոր մեղքը ,
ու յանցանքը , և ան տեղուան-
քը՝ ուր որ իր դարձի գալէն ա-
ռաջ բարձր տեղեր շինեց , ու Աս-
տարովթի կուռքեր ու քանդակած
կուռքեր կանգնեց , ահա † Հոզային
ժամանակագրութեանը մէջ գը-
20 րուած է ։ [գ]Եւ Մանասէ իր հայ-
րերուն հետ քնացաւ · ու զանիկայ
իր տանը մէջ թաղեցին · և անոր
տեղը՝ անոր որդին Ամոնը թագա-
ւոր եղաւ ։
21 Ամոն [դ]քսանուերկու տարեկան
էր՝ երբոր թագաւոր եղաւ , ու Ե-
րուսաղէմի մէջ երկու տարի թա-
22 գաւորութիւն ըրաւ ։ Ու Տէրոջը
առջևը չարութիւն ըրաւ՝ իր հօրը
Մանասէին ըրածին պէս · և իր հօ-
րը Մանասէին շինած բոլոր կուռ-
քերուն՝ Ամոն զոհ մատուց , ու ա-
23 նոնց ծառայութիւն ըրաւ ։ Բայց
Տէրոջը առջևը չխոնարհեցաւ ,
[ե]ինչպէս որ իր հայրը Մանասէն
խոնարհեր էր · մանաւանդ աս Ա-
մոնը աւելի յանցանք գործեց ։
24 [զ]Եւ իր ծառաները դաւաճանու-
թիւն ըրին իրեն դէմ , ու զանիկայ
25 իր տանը մէջ մեռցուցին ։ Ու երկ-
րին ժողովուրդը՝ Ամոն թագաւո-
րին դէմ դաւաճանութիւն ընող-
ներուն ամէնը մեռցուցին · ու երկ-
րին ժողովուրդը անոր որդին Յով-
սիան՝ անոր տեղը թագաւոր դրին ։

## ԳԼ. ԼԴ

1 Յովսիային բարի թագաւորութիւնը ։ 3 Անիկայ կռապաշտութիւնը բնաջինջ կ'ընէ ։ 8 Տաճարին նորոգութեանը ձեռք կը զարնէ ։ 14 Քեղկիա քահանան օրինաց գիրք մը կը գտնէ , ու Յովսիա մարդ կը ղրկէ Ողդային՝ որ անոր վրայով Տէրոջը հարցընէ ։ 23 Ողդա կը մարգարէանայ թէ Երուսաղէմը պիտի կործանուի , բայց ոչ՝ թէ Յովսիային օրերը ։ 29 Յովսիա ան օրինաց գիրքը հանդիսաւոր ժողովքի մը մէջ կարդացընել տալով , Աստուծոյ հետ նորէն ուխտ կ'ընէ ։

1 [է]Յովսիա ութը տարեկան էր՝
երբոր թագաւոր եղաւ , ու Ե-
րուսաղէմի մէջ երեսունումէկ տարի
2 թագաւորեց ։ Եւ անիկայ Տէրոջը

Ն · Ք · ԳՔ · 698

[ը] Ղև · ժը · 21 ։ Բ Օր · ժը · 10 ։ Դ Թագ · իզ · 10 ։ Գլ · իը · 3 ։ Եզեկ · իդ · 37 , 39 ։
[թ] Բ Օր · ժը · 10 · 11 ։
[ժ] Դ Թագ · իա · 6 ։
[ի] Դ Թագ · իա · 7 ։
[լ] Սաղ · ճլբ · 14 ։
[խ] Բ Թագ · է · 10 ։

677

[ծ] Բ Օր · իը · 36 ։ Յոբ · լզ · 8 ։
* Կամ՝ կարթերով
[կ] Սաղ · ճէ · 10 , 11 ։
[հ] Ա Պետ · ե · 6 ։
[ձ] Ա Մն · ե · 20 ։ Եզր · ը · 23 ։
[ղ] Սաղ · թ · 16 ։ Դան · դ · 25 ։
[ճ] Գ Թագ · ա · 33 ։
[մ] Գլ · իէ · 3 ։
[յ] Հմր 3 , 5 , 7 ։
[ն] Ղև · է · 12 ։

Ն · Ք · ԳՔ · 677

[ա] Գլ · լբ · 12 ։
[բ] Ա Թագ · թ · 9 ։
† Կամ՝ տեսանողներուն
[գ] Դ Թագ · իա · 18 ։
[դ] Դ Թագ · իա · 19 , Ճ ։
[ե] Հմր 12 ։
[զ] Դ Թագ · իա · 23 , 24 ։

641

[է] Դ Թագ · իբ · 1 , Ճ ։

Ն. Ք. զՔ. 677

634

բ Գլ. ԺԵ. 2։

630

գ Դ Թագ. ԺԳ. 2։
դ Գլ. ԼԳ. 17, 22։
ե Ղև. ԻԶ. 30։ Դ Թագ. ԻԳ. 4։

զ Դ Թագ. ԻԳ. 4։
է Գ Թագ. ԺԳ. 2։

* Կամ՝ շուրջանակի անոնց տուները փլնուռեց։
ը Օր. Թ. 21։

624
թ Դ Թագ. ԻԲ. 3։

ժ Տես Դ Թագ. ԺԲ. 4. Ա.
† Եբր. տուռին.

առջեւ ուղղութիւն ըրաւ, ու իր
հօրը Դաւիթին ճամբաներուն մէջը
քալեց, ու աջ կամ ձախ կողմը
չխոտորեցաւ։
3 Եւ իր թագաւորութեանը ու-
թերորդ տարին՝ երբոր դեռ ինքը
պատանի էր, [բ] իր հօրը Դաւիթին
Աստուածը խնդրել սկսաւ. ու եր-
կոտասաներորդ տարին՝ [գ] Յուդան
ու Երուսաղէմը՝ [դ] բարձր տեղերէն,
Աստարովթի կուռքերէն, և քան-
դակած ու ձուլածոյ կուռքերէն
4 մաքրել սկսաւ։ [ե] Եւ Բահաղիմի
սեղանները անոր առջեւը կործա-
նեցին. ու անոնց վրայի արեգական
կուռքերը կոտրտեց. և Աստա-
րովթի կուռքերը, ու քանդակած
ու ձուլածոյ կուռքերը մանրեց ու
փշրեց, [զ] ու անոնց զոհ մատու-
ցանողներուն գերեզմաններուն վը-
5 րայ ցանեց։ [է] Եւ քուրմերուն ոս-
կորները՝ անոնց սեղաններուն վրայ
այրեց. ու Յուդան ու Երուսա-
6 ղէմը մաքրեց։ Եւ Մանասէի, ու
Եփրեմի, ու Շմաւոնի քաղաքնե-
րուն մէջը՝ մինչև Նեփթաղիմ, *և
անոնց բոլորտիքը եղած տեղուան-
7 քը նոյն բանը ըրաւ։ Ու սեղան-
ները, և Աստարովթի կուռքերը
կործանեց. ու [ը] քանդակած կուռ-
քերը մանրեց ու փշրեց, և Իսրա-
յէլի բոլոր երկրին մէջ եղող բո-
լոր արեգական կուռքերը կո-
տըրտեց, ու Երուսաղէմ դար-
ձաւ։
8 Եւ [թ] իր թագաւորութեանը
տասնըութերորդ տարին, երբոր
երկիրը ու էր տունը մաքրեց, Եսե-
լիայի որդին Սափանը, ու քաղա-
քին իշխանը Մաասիան, ու Յովա-
քազի որդին Յովաքը՝ յիշատա-
կաց դպիրը խրկեց, որ իր Տէր
9 Աստուծոյն տունը նորոգեն։ Եւ
անոնք Քեղկիա քահանայապետին
եկան. ու [ժ] Աստուծոյ տունը բե-
րուած ստակը † տուին, որն որ
Ղևտացիները՝ դրան պահապաննե-
րը՝ Մանասէի ու Եփրեմի ձեռքէն,
և Իսրայէլի բոլոր մնացորդէն, ու
բոլոր Յուդայէն, ու Բենիամինէն,
ու Երուսաղեմի բնակիչներէն ժող-
10 վեր էին. Եւ Տէրոջը տանը գոր-
ծին վրայ դրուած բանւորներուն
ձեռքը տուին. անոնք ալ Տէրոջը
տանը մէջ գործող բանւորներուն
տուին զանիկայ, տունը նորոգելու
11 ու շինելու համար, Այսինքն՝ հիւ-
սներուն ու շինողներուն տուին, որ
Յուդայի թագաւորներուն աւրած
տուները շինելու համար՝ տաշուած
քարեր, ու գերաններու համար՝
12 փայտեր ծախու առնեն։ Եւ ան
մարդիկները գործը հաւատարմու-
թեամբ կը բանէին. ու գործը յա-
ռաջ տանելու համար անոնց վրայ
կեցողները՝ Մերարիի որդիներէն՝
Ղևտացի Յեթը ու Աբդիան, և
Կահաթեանց որդիներէն՝ Զաքա-
րիան ու Մեսուղամն էին. և այս
Ղևտացիները՝ ամէնքն ալ երգոց
նուագարաններուն աղէկ տեղեակ
13 էին. Նաև բեռնակիրներուն ու
ամէն տեսակ գործը բանողներուն
վերակացուներն էին. [ի] և դպիրնե-
րը, ոստիկանները ու դռնապան-
ները՝ Ղևտացիներէն էին։
14 Ու երբոր Տէրոջը տունը բերուած
ստակը կը հանէին, Քեղկիա քա-
հանան Մովսէսին ձեռքովը տրուած
15 [լ] Տէրոջը օրինաց գիրքը գտաւ. Ու
Քեղկիա պատասխան տուաւ, ու
Սափան դպիրին ըսաւ. Տէրոջը տա-
նը մէջ օրինաց գիրք մը գտայ. ու
Քեղկիա ան գիրքը Սափանին տու-
16 աւ։ Եւ Սափան՝ գիրքը թագա-
ւորին տարաւ, ու թագաւորին
պատասխան բերաւ՝ ըսելով. Քու
ծառաներդ իրենց յանձնուած բո-
17 լոր գործը կը կատարեն. Եւ Տէրոջը
տանը մէջ գտնուած ստակը հանե-
ցին, ու զանիկայ վերակացունե-
րուն ձեռքը՝ ու գործը բանողնե-
18 րուն ձեռքը տուին։ Եւ Սափան
դպիրը թագաւորին պատմեց, ու
ըսաւ. Քեղկիա քահանան ինծի
մէկ գիրք մը տուաւ. ու Սափան
անոր մէջէն թագաւորին առջեւը
19 կարդաց։ Ու թագաւորը օրինաց
խօսքերը լսածին պէս՝ իր հանդերձ-
20 ները պատռեց։ Եւ թագաւորը՝
Քեղկիային, ու Սափանի որդւոյն
Աքիկամին, ու Միքայի որդւոյն
[խ] Աբդոնին, և Սափան դպիրին, ու
թագաւորի ծառային՝ Ասայիային
21 պատուիրեց, ու ըսաւ. Գացէ՛ք
ինծի համար, և Իսրայէլի ու Յու-
դայի մնացորդներուն համար՝ այս
գտնուած գրքին խօսքերուն վրա-
յով Տէրոջը հարցուցէ՛ք. վասն զի
մեր հայրերը Տէրոջը խօսքը չպա-
հելնուն համար, և աս գրքին մէջը
բոլոր գրուածները չկատարելնուն
համար, մեր վրայ թափուած Տէրո-
22 ջը բարկութիւնը մեծ է։ Ու Քեղ-
կիա՝ ու թագաւորին մարդիկները՝
[ծ] Ասրայի որդւոյն Թեկուայի որ-
դւոյն Սեղղում հանդերձապետին
կնկանը՝ Ողդա մարգարէին գացին.
և անիկայ Երուսաղէմ՝ Մասնայի
մէջ կը բնակէր. ու անոր հետ այն-
պէս խօսեցան։
23 Եւ անիկայ ըսաւ անոնց. Իսրա-
յէլին Տէր Աստուածը այսպէս կ'ը-
սէ. Ձեզ ինծի ղրկող մարդուն
24 ըսէք. Տէրը այսպէս կ'ըսէ. Ահա
ես աս տեղիս ու անոր բնակիչնե-

Ն. Ք. զՔ. 624

ի Ա Մն. ԻԴ. 4, 5։

լ Դ Թագ. ԻԲ. 8, Ա.

խ Դ Թագ. ԻԲ. 12 Կամ՝ Աքոբոր։

ծ Դ Թագ. ԻԲ. 14 Կամ՝ Նրասա։

Ն. Ք. ԳՔ. 624

րուն վրայ չարիք պիտի բերեմ.
այսինքն՝ ան բոլոր անէծքները՝ որ
Յուդայի Թագաւորին առջեւը կար-
դացուած գրքին մէջը գրուած է.
25 Որովհետեւ զիս թողուցին, եւ ուրիշ
աստուածներու խունկ ծխեցին, որ
իրենց ձեռքերուն բոլոր գործքերո-
վը զիս բարկացընեն. ուստի աս
տեղիս վրայ իմ բարկութիւնս պի-
26 տի թափի, ու պիտի չմարի ։ Բայց
Տէրոջը հարցընելու համար ձեզ
խրկող Յուդայի Թագաւորին ա-
սանկ ըսէք. Իսրայէլի Տէր Աս-
տուածը այսպէս կ՚ըսէ լսած խօս-
27 քերուդ համար. Որովհետեւ քու
սիրտդ կակղցաւ, ու Աստուծոյ
առջեւը խոնարհեցար, երբոր աս
տեղիս վրայ՝ ու անոր բնակչացը
վրայ անոր ըսած խօսքերը լսեցիր, եւ
իմ առջեւս խոնարհեցար, ու հան-
դերձներդ պատռեցիր, ու իմ առ-
ջեւս լացիր, ես ալ լսեցի, կ՚ըսէ
28 Տէրը ։ Ահա ես քեզ քու հայրե-
րուդ պիտի խառնեմ, ու խաղա-
ղութեամբ քու գերեզմանիդ մէջ
պիտի անփոփուիս. եւ աս տեղիս
վրայ ու անոր բնակչացը վրայ իմ
բերելու բոլոր չարիքներս՝ քու
աչքերդ պիտի չտեսնեն ։ Ու
անոնք Թագաւորին պատասխան
բերին ։

Ե Դ Թագ. ԻԳ. 1, Զ.

29 Եւ Թագաւորը մարդ խրկեց, ու
Յուդային ու Երուսաղէմին բոլոր
30 ծերերը ժողվեց ։ Եւ Թագաւորը,
ու Յուդային բոլոր մարդիկները,
ու Երուսաղէմին բնակիչները, եւ
քահանաները, ու Ղեւտացիները,
ու բոլոր ժողովուրդը՝ մեծէն մինչեւ
պզտիկը Տէրոջը տունը ելան. եւ
Տէրոջը տանը մէջ գտնուած ուխտի
գրքին բոլոր խօսքերը անոնց *առ-
31 ջեւը կարդաց ։ Ու Թագաւորը Հիր
տեղը ոտքի վրայ կայնեցաւ, ու
Տէրոջը առջեւը ուխտ ըրաւ, որ ան
գրքին մէջը գրուած ուխտին խօս-
քերը կատարելու համար՝ Տէրոջը
ետեւէն երթայ, եւ անոր պատուի-
րանքները, ու վկայութիւնները,
ու կանոնները բոլոր սրտով ու բո-
32 լոր հոգիով պահէ ։ Ու Երուսա-
ղէմի եւ Բենիամինի մէջ բոլոր
գտնուողները կայնեցուց. ու Երու-
սաղէմի բնակիչները Աստուծոյ՝
իրենց հարցը Աստուծոյն ուխտին
33 պէս ըրին ։ Եւ Յովսիա Իսրայէլի
որդւոցը ամէն երկիրներէն Յբոլոր
գարշութիւնները վերցուց. ու բո-
լոր Իսրայէլի մէջ գտնուողներուն՝
իրենց Տէր Աստուծոյն ծառայու-
թիւն ընել տուաւ. Զանոր կենացը
բոլոր օրերուն մէջ՝ իրենց հայրե-
րուն Տէր Աստուծմէն չխոտորե-
ցան ։

* Եբր. առ-կանջներուն
Հ Դ Թագ. ԻԳ. 3 ։ ԳԼ. Զ. 13 ։
Յ Դ Թագ. ԻԳ. 5.
Զ Երեմ. Գ. 10 ։

ԳԼ. ԼԵ

1 Յովսիա խիստ հանդիսաւոր զատիկ մը կ՚ընէ ։ 20 Անիկայ փարաւոն Նեքաւովը գրգռելով՝ Մակեդդովի մէջ կը սպաննուի ։ 25 Յովսիային վրայ ըսուած ողբերը ։

Ն. Ք. ԳՔ. ԽՐՐ 623

1 Եւ Յովսիա Երուսաղէմի մէջ Տէ-
րոջը զատիկ ըրաւ. ու զատի-
կը՝ առաջին ամսուն Բ չորեքտասա-
2 ներորդ օրը մորթեցին ։ Եւ քահա-
նաները իրենց Գպահպանութեանը
վրայ կայնեցուց, ու Դզանոնք Տէ-
րոջը տանը ծառայութիւնը ընելու
3 քաջալերեց ։ Եւ բոլոր Իսրայէլին
Եսորվեցընող՝ ու Տէրոջը նուի-
րուած Ղեւտացիներուն ըսաւ.
ԶՍուրբ տապանակը՝ Իսրայէլի Թա-
գաւորին Դաւիթի որդւոյն Սողո-
մոնին շինած տունը դրէք. Է ձեր
ուսերուն վրայ բեռ չըլլայ. ու հի-
մա ձեր Տէր Աստուծոյն ու անոր
ժողովուրդին Իսրայէլին ծառայու-
4 թիւն ըրէք. Եւ ձեր ազգատոհմ-
ներովը ու ձեր դասերովը՝ Ըիսրա-
յէլի Թագաւորին Դաւիթին գրա-
ծին պէս՝ Թու անոր որդւոյն Սողո-
մոնին գրածին պէս՝ պատրաստ
5 եղէք ։ Եւ ձեր եղբայրներուն ժո-
ղովուրդին որդւոցը տոհմերուն ո-
րոշմունքներուն համեմատ, ու Ղե-
ւտացւոց ազգատոհմներուն բաժան-
մունքներուն համեմատ՝ Ժսրբա-
6 րանին մէջը կայնեցէք. Եւ զատի-
կը մորթեցէք, ու Իսրբուեցէք, ու
Լանիկայ ձեր եղբայրներուն համար
պատրաստեցէք, որ անոնք Տէրոջը
Մովսէսին ձեռքովը ըսած խօսքին
7 պէս ընեն ։ Եւ Յովսիա Խբոլոր
հոն գտնուող ժողովուրդին որդւո-
ցը՝ հօտերէն երսուն հազար գառն
ու այծի ձագ պարգեւեց. ամէնն ալ
զատկի համար. նաեւ իրեք հազար
արջառ. ասոնք Թագաւորին ստա-
8 ցուածքէն էին ։ Իշխաններն ալ՝
ժողովուրդին, քահանաներուն ու
Ղեւտացիներուն՝ յօժարութեամբ
պարգեւ տուին. Աստուծոյ տանը
իշխանները՝ Քեղկիա, Զաքարիա
ու Յեքիէլ՝ զատկի համար՝ երկու
հազար վեց հարիւր գառն, ու ի-
րեք հարիւր արջառ քահանաներուն
9 տուին ։ Եւ Քոնոնիա, ու անոր
եղբայրները՝ Սեմայիա ու Նաթա-
նայէլ, ու Ղեւտացւոց իշխանները՝
Ասաբիա, Յէիէլ եւ Յովզաբադ՝
զատկի համար՝ Ղեւտացիներուն
հինգ հազար գառն ու հինգ հարիւր
արջառ պարգեւեցին ։
10 Եւ պաշտօնը պատրաստուեցաւ.
ու Թագաւորին հրամայածին պէս՝
քահանաները Ի իրենց կարգին հա-
մեմատ, ու Ղեւտացիները իրենց
դասերուն համեմատ կայնեցան.
11 Եւ զատիկը կը մորթէին, ու քա-

Ա Դ Թագ. ԻԳ. 21, 22 ։
Բ Ել. ԺԲ. 6 ։ Եզր. Զ. 19 ։
Գ ԳԼ. ԻԳ. 18 ։ Եզր. Զ. 18 ։
Դ ԳԼ. ԻԹ. 5, 11 ։
Ե Բ Օր. ԼԳ. 10 ։ ԳԼ. Լ. 22 ։ Մաղ. Բ. 7 ։
Զ ԳԼ. Ե. 7 ։
Է Ա Մն. ԻԳ. 26 ։
Ը Ա Մն. ԻԳ ։ ԻԵ ։ ԻԶ ։
Թ ԳԼ. Ը. 14 ։
Ժ Սաղ. ՃԼԴ. 1 ։
Ի ԳԼ. ԻԹ. 5. 15 ։ Լ. 3. 15 ։ Եզր. Զ. 20 ։
Լ ԳԼ. Լ. 24 ։
Ի Եզր. Զ. 13 ։

Ն. Ք. ԳՃ. Իբր 623

ծ Գլ. ԻԹ. 22։ Տես Գլ. ԻԹ. 34։ Ղև. Գ. 3։

հանանները անոնց ձեռքէն արիւնը
առնելով՝ ծ կը սրսկէին. իսկ Ղևտա-
12 ցիները մորթը կը հանէին, Եւ ող-
ջակէզ ըլլալու համար կը զատէին,
ու զանոնք ժողովուրդին որդւոցը
ազգատոհմներուն համեմատ կը
բաժնէին, որ Տէրոջը մատուցանեն՝
Մովսէսին գրքին մէջը գրուածին
պէս. արջառներուն ալ այսանկ ըրին։

Ել. ԺԲ. 8, 9։ Բ Օր. ԺԶ. 7։ Ա Թագ. Բ. 13, 14, 15։

13 Եւ զատիկը ըստ սովորու-
թեան կրակով խորովեցին. բայց
նուիրուած բաները կաթսաներով,
աններով ու տապակներով եփե-
ցին, ու շուտով բաժնեցին ամենուն
14 բոլոր ժողովուրդին որդւոցը։ Եւ
իրենց ու քահանայից համար՝ ետ-
քը պատրաստեցին. քանզի Ահա-
րոնի որդիքը՝ քահանաները՝ մին-
չև գիշերը ողջակէզները ու ճար-
պերը մատուցանելու զբաղած էին.
ուստի Ղևտացիները իրենց հա-
մար և Ահարոնի որդւոցը քահա-
նաներուն համար պատրաստեցին։

Ա Մն. ԻԵ. 1, ևն.

15 Իսկ Ասափի որդիքը երգեցողնե-
րը՝ ե Դաւիթին, ու Ասափին
ու Եմանին, և թագաւորական
տեսանող Իդիթունին պատուի-
րածին համեմատ իրենց տեղը՝ ու
դռնապանները զ ամէն մէկ դուռը
պահող էին. պէտք չեղաւ որ ի-
րենց պաշտօնէն զատուին. վասն զի
անոնց համար անոնց եղբայրները
Ղևտացիները կը պատրաստէին։

Ա Մն. Թ. 17, 18։ ԻԶ. 14, ևն.

16 Եւ Յովսիա թագաւորին հրամա-
յածին պէս՝ ան օրը Տէրոջը ամէն
պաշտօնը կարգի դրուեցաւ, զա-
տիկը ընելու ու ողջակէզները Տէ-
րոջը սեղանին վրայ մատուցանե-
17 լու համար։ Եւ ան ատենը՝ հոն
գտնուող Իսրայէլի որդիքը՝ զա-
տիկը ու ծ Բաղարջակերաց տօնը

Ել. ԺԲ. 15։ ԺԳ. 6։ Գլ. Լ. 21։

18 եօթը օր ըրին։ Եւ Սամուէլ մար-
գարէին օրերէն 'ի վեր՝ Իսրայէլի
մէջ ն ասոր պէս զատիկ մը չեղաւ.

Դ Թագ. ԻԳ. 22, 23։

ու Յովսիային, ու քահանանե-
րուն, ու Ղևտացիներուն, և բոլոր
հոն գտնուող Յուդային, ու Իսրա-
յէլին, ու Երուսաղէմի բնակչացը
ըրած զատկին պէս՝ Իսրայէլի բոլոր
19 թագաւորները ըրած չէին։ Աս
զատիկը Յովսիայի թագաւորու-
թեանը տասնըութերորդ տարին
եղաւ։

610

Դ Թագ. ԻԳ. 29։ Երեմ. ԽԶ. 2։

20 ն Ասոր ամէն բաներէն ետքը՝ ու
Յովսիային՝ տաճարին կարգադրու-
թիւնը հաստատելէն ետքը, Եգիպ-
տոսի Նեքաւով թագաւորը՝ Եփ-
րատին քովը Քարքամիս քաղաքին
դէմ պատերազմելու ելաւ. ու
Յովսիա զանիկայ դիմաւորելու
21 գնաց։ Իսկ անիկայ դեսպաններ
խրկեց անոր՝ ու ըսաւ. Ո՛վ Յու-
դայի թագաւոր՝ դուն ինծի հետ
ի՛նչ գործ ունիս. Ես այսօր քեզի
դէմ ելած չեմ, հապա ինծի հետ
պատերազմ ընող տանը դէմ. ու
Աստուած ինծի հրամայեց որ շու-
տով ընեմ. իմ հետս եղող Աս-
տուծմէն ետ կեցիր, որ քեզ չկոր-
22 սնցընէ։ Բայց Յովսիա իր երեսը
անկէ չդարձուց, հապա անոր հետ
պատերազմելու * համար ° իր հա-
գուստը փոխեց", ու մտիկ չըրաւ
Նեքաւոյին խօսքը՝ որ Աստուծոյ
բերնէն էր, ու Մակեդդովի հովիտը

* Կամ՝ փնտռեց։

Գ Թագ. ԻԲ. 30։

23 պատերազմելու գնաց։ Եւ ա-
ղեղնաւորները Յովսիա թագաւորը
նետով զարկին, ու թագաւորը իր
ծառաներուն ըսաւ. Զիս վերցու-
ցէ՛ք ասկէ. վասն զի սաստիկ վի-
24 րաւորուեցայ։ ղ Եւ իր ծառանե-
րը զանիկայ կառքէն հանեցին, ու
իր երկրորդ կառքը հեծցընելով՝
Երուսաղէմ տարին. և անիկայ
մեռաւ, ու իր հարցը գերեզմաննե-
րուն մէջը թաղուեցաւ. և ՚ բոլոր
Յուդան ու Երուսաղէմը Յովսիա-

Գ Թագ. ԻԲ. 34։ Դ Թագ. ԻԳ. 30։

Զաք. ԺԲ. 11։

25 յին վրայ սուգ ըրին։ Ու Երեմիա՝
Յովսիային վրայ ողբ ըսաւ. ու
բոլոր երգեցողները արք և կա-
նայք՝ մինչև աս օրս իրենց ողբե-
րուն մէջ Յովսիան կը յիշեն. ու
զանոնք հաստատուն սովորութիւնը Իս-
րայէլի մէջ մտցուցին. և ահա ող-
բերուն մէջը գրուած են։

Ողբ. Դ. 20։ Տես Մատ. Թ. 23։

26 Եւ Յովսիային մնացորդ պատ-
մութիւնը, ու անոր՝ Տէրոջը օ-
րէնքին մէջ գրուածին համեմատ՝
27 ըրած բարեգործութիւնը, Եւ անոր
առաջին ու վերջին պատմութիւ-
նը՝ ահա Իսրայէլի ու Յուդայի
թագաւորներուն գրքին մէջը գը-
րուած է։

## ԳԼ. ԼԶ.

1 Յովաքազ իր հօրը տեղը կը յաջորդէ. իսկ Փարաւոն Նեքաւով զանիկայ աթոռէն վար առնելով՝ Եգիպտոս կը տանի իր հետը։ 5 Յովակիմ չարութիւն կ'ընէ Տէրոջը առջևը, ու կապուած Բաբիլոն կը տարուի։ 9 Յովաքին անոր տեղը յաջորդելով՝ չար վարմունք կ'ունենայ, ու Բաբելոն կը տարուի։ 11 Սեդեկիա անոր տեղը կ'անցնի ու չար վարմունք կ'ունենայ. մարգարէները կ'անարգէ, ու Նաբուգոդոնոսորին դէմ կ'ապստամբի։ 14 Երուսաղէմ՝ քահանաներուն ու ժողովուրդին մեղացը պատճառով՝ բոլորովին կը կործանուի։ 22 Կիւրոսին հրովարտակը։

1 Ու երկրին ժողովուրդը Յովսիա-
յին որդին Յովաքազը առին, և
զանիկայ իր հօրը տեղը՝ Երուսա-
2 ղէմի մէջ թագաւոր դրին։ Յո-
վաքազ քսանուիրեք տարեկան էր՝
երբոր թագաւոր եղաւ, ու Երու-
սաղէմի մէջ իրեք ամիս թագաւո-
3 րութիւն ըրաւ։ Ու Եգիպտոսի
թագաւորը զանիկայ Երուսաղէմի
մէջ թագաւորելէն վար առաւ, ու երկրին

Դ Թագ. ԻԳ. 30, ևն.

վրայ հարիւր տաղանդ արծաթ՝ ու
մէկ տաղանդ ոսկի հարկ դրաւ ։
4 Ու Եգիպտոսի թագաւորը՝ անոր
եղբայրը Եղիակիմը Յուդայի ու
Երուսաղեմի վրայ թագաւոր դը-
րաւ, և անոր անունը Յովակիմի
փոխեց. ու Նեքաւով՝ անոր եղ-
բայրը Յովաքազը առաւ՝ ու Ե-
գիպտոս տարաւ ։
5 Յովակիմ [գ]քսանըհինգ տարե-
կան էր՝ երբոր թագաւոր եղաւ,
ու Երուսաղեմի մէջ տասնըմէկ
տարի թագաւորութիւն ըրաւ.
և անիկայ իր Տէր Աստուծոյն
6 առջևը չարութիւն ըրաւ ։ [դ]Ա-
նոր վրայ [ե]Բաբիլոնի Նաբուգո-
դոնոսոր թագաւորը ելաւ, ու
[զ]զանիկայ Բաբիլոն տանելու հա-
7 մար՝ ոտնակապերով կապեց ։ [է]Եւ
Նաբուգոդոնոսոր՝ Տէրոջը տանը
անօթներէն [illegible], [illegible] Բաբիլոն
տարաւ. ու զանոնք Բաբիլոն իր
8 տաճարին մէջը դրաւ ։ Եւ Յո-
վակիմին մնացորդ պատմութիւնը,
ու անոր ըրած գարշութիւնները,
և անոր վրայ գտնուածը՝ ահա Ի-
սրայէլի ու Յուդայի թագաւորնե-
րուն գրքին մէջը գրուած են. ու
անոր տեղը՝ անոր որդին [ը]Յովա-
քինը թագաւոր եղաւ ։
9 Յովաքին [թ][illegible]ութը տարե-
կան էր՝ երբոր թագաւոր եղաւ, ու
Երուսաղեմի մէջ իրեք ամիս ու
տասը օր թագաւորեց. և անիկայ
Տէրոջը առջևը չարութիւն ըրաւ ։
10 Ու հետևեալ տարին՝ [ժ]Նաբուգո-
դոնոսոր թագաւորը մարդ խրկեց,
ու զանիկայ՝ [ի]Տէրոջը տաճարին
պատուական սպասներովը Բաբիլոն
բերել տուաւ. և Յուդայի ու Ե-
րուսաղեմի վրայ՝ անոր հօրը եղ-
բայրը [լ]Սեդեկիան թագաւոր դը-
րաւ.
11 Սեդեկիա [խ]քսանըմէկ տարեկան
էր՝ երբոր թագաւոր եղաւ, ու Ե-
րուսաղեմի մէջ տասնըմէկ տարի
12 թագաւորութիւն ըրաւ ։ Եւ ա-
նիկայ իր Տէր Աստուծոյն առջևը
չարութիւն ըրաւ. [illegible] Տէրոջը բեր-
նէն խօսող Երեմիա մարգարէին
13 առջևը չխոնարհեցաւ. Ու [ծ]նաև
ապստամբեցաւ Նաբուգոդոնոսոր
թագաւորէն, որ անոր երդում
ընել տուեր էր Աստուծոյ անու-
նովը, և [կ]իր պարանոցը խստացուց
ու իր սիրտը կարծրացուց՝ որ Ի-
սրայէլի Տէր Աստուծոյն չդառնայ ։
14 Քահանաներուն բոլոր իշխանները
ու ժողովուրդն ալ՝ ազգերուն բո-
լոր գարշութիւններուն հետևելով՝
խիստ շատ անօրէնութիւններ ը-

Ն. Ք.
610

[գ] գ Թագ. իգ. 36, 37 ։
[դ] գ Թագ. իդ. 1 ։
607
[ե] Ամբ. ա. 6 ։
606
[զ] Տես գ Թագ. իդ. 6 ։ Երեմ. իբ. 18, 19 ։ լզ. 30 ։
[է] գ Թագ. իդ. 13 ։ Դան. ա. 1, 2 ։ ե. 2 ։
[ը] ա Մն. գ. 16 Կ'ըսուի Յեքոնիա ։
599
[թ] գ Թագ. իդ. 8 ։
[ժ] գ Թագ. իդ. 10-17 ։
[ի] Դան. ա. 1, 2 ։ ե. 2 ։
[լ] գ Թագ. իդ. 17 ։ Երեմ. լէ. 1 ։
[խ] գ Թագ. իդ. 18 ։ Երեմ. ծբ. 1, &c. ։
[ծ] Երեմ. ծբ. 3 ։ Եզեկ. ժէ. 15, 18 ։
593
[կ] գ Թագ. ժէ. 14 ։

րին, ու Տէրոջը Երուսաղեմի մէջ
15 սրբած տունը պղծեցին ։ [հ]Եւ ա-
նոնց հայրերուն Տէր Աստուածը՝
իր ժողովուրդին ու իր բնակարա-
նին խնայելուն համար, իր պատ-
գամաւորներուն ձեռքովը՝ *մեծ
փութով՝ [illegible] կը
16 խրկէր. Բայց [ձ]անոնք Աստուծոյ
խրկած պատգամաւորները կ'անար-
գէին, [ղ]անոր խօսքերը կ'արհամար-
հէին, ու [ճ]անոր մարգարէները
ծաղր կ'ընէին. մինչև որ [մ]Տէրոջը
բարկութիւնը իր ժողովուրդին
վրայ բորբոքեցաւ, անանկ որ՝ ալ
17 բժշկութիւն չմնաց ։ Եւ [յ]անոնց
վրայ Քաղդէացւոց թագաւորը
հանեց. անիկայ ալ [ն]անոնց երի-
տասարդները անոնց սրբարանին
մէջը սրով մեռցուց. ու երիտա-
սարդին ու կոյսին, ծերին ու ալե-
ւորին չխնայեց. ամէնն ալ Տէրը
18 անոր ձեռքը մատնեց ։ [շ]Եւ Աս-
տուծոյ տանը բոլոր մեծ ու պզտիկ
անօթները, ու Տէրոջը տանը գան-
ձերը, և թագաւորին ու անոր իշ-
խաններուն գանձերը՝ ամէնն ալ
19 Բաբիլոն տարաւ ։ [ո]Եւ Աստուծոյ
տունը այրեցին, ու Երուսաղեմին
պարիսպը փլցուցին, ու անոր ամէն
պալատները կրակով այրեցին, ու
բոլոր գեղեցիկ բաները աւրեցին ։
20 Եւ [չ]սուրէն փախած մնացորդները՝
Բաբիլոն գերի տարաւ. ու մինչև
Պարսից թագաւորութեանը հաս-
տատուիլը, [պ]անոր՝ և անոր որ-
21 դւոցը ծառաներ եղան. Որպէս զի
[ջ]Երեմիային բերնովը ըսուած Տէրո-
ջը խօսքը կատարուի, մինչև որ եր-
կիրը [ռ]իր շաբաթները վայելէ ։ Իր
աւերմանը բոլոր օրերը [ս]շաբաթ
պահեց, մինչև եօթանասուն տա-
րին լմննալը ։
22 [վ]Եւ Պարսից Կիւրոս թագաւո-
րին առջի տարին՝ [տ]Երեմիային
բերնովը ըսուած Տէրոջը խօսքը
†կատարուելու համար, Տէրը Պար-
սից [ր]Կիւրոս թագաւորին հոգին
արթընցուց. ու անիկայ իր բոլոր
թագաւորութեանը մէջ հրատա-
րակել տուաւ, ու նաև հրովար-
տակ գրեց՝ ըսելով.
23 [ց]Այսպէս կ'ըսէ Կիւրոս՝ Պարսից
թագաւորը. Երկնից Եհովայ Աս-
տուածը երկրիս բոլոր թագաւո-
րութիւնները ինծի տուաւ. ու
անիկայ ինծի պատուիրեց, որ Յու-
դայի Երուսաղեմին մէջ անոր տուն
մը շինեմ ։ Ձեր մէջը ո՛վ որ անոր
բոլոր ժողովուրդէն է, իր Եհովայ
Աստուածը իր հետը ըլլայ, ու ել-
լէ ։

Ն. Ք.
593

[հ] Երեմ. իե. 3, 4 ։ լե. 15 ։ խդ. 4 ։
* Եբր. կանուխ ելլելով ու խրկելով.
[ձ] Երեմ. ե. 12, 13 ։
[ղ] Առակ. ա. 25, 30
[ճ] Երեմ. լբ. 3 ։ լը. 6 ։ Մատ. իգ. 34 ։
[մ] Սաղ. հդ. 1 ։ հթ. 5 ։
590
[յ] բ Օր. իը. 49 ։ գ Թագ. իե. 1, &c. ։ Եզր. Թ. 7 ։
588
[ն] Սաղ. հդ. 20 ։ հթ. 2, 3 ։
[շ] գ Թագ. իե. 13, &c. ։
[ո] գ Թագ. իե. 9 ։ Սաղ. հդ. 6, 7 ։ հթ. 1, 7 ։
[չ] գ Թագ. իե. 11 ։
[պ] Երեմ. իէ. 7 ։
[ջ] Երեմ. իե. 9, 11, 12 ։ իթ. 6, 7 ։ լթ. 10 ։
[ռ] Ղև. իզ. 34, 35, 43 ։ Դան. Թ. 2 ։
[ս] Ղև. իե. 4, 5 ։
536
[վ] Եզր. ա. 1 ։
[տ] Երեմ. իե. 12, 13 ։ իթ. 10 ։ լա. 10, 11, 14 ։
† Կամ՝ կատարուելուն պէս,
[ր] Ես. խդ. 28 ։
[ց] Եզր. ա. 2, 3 ։

# ԳԻՐՔ ԵԶՐԱՍԱՅ

Ն. Ք. ԳՃ. ԻԵՐ 536

ա Բ Մն. Լզ. 22. 23. Երեմ. իե. 12. իթ. 10.
* Կամ՝ կատարուելուն պէս.
բ Գլ. ե. 13. 14.

գ Ես. խդ. 28. խե. 1. 13.

դ Դան. զ. 26.

ե Փիլ. բ. 13.

† Եբր. ձեռքերը ուժովցուցին.
զ Գլ. ե. 14. զ. 5.
է Դ Թագ. իդ. 13. Բ Մն. Լզ. 7.

## ԳԼՈՒԽ Ա

1 Կիւրոսին հրամանը տաճարին շինութեանը համար ։ 5 Ժողովուրդը կը պատրաստուի Հրէաստան դառնալու ։ 7 Կիւրոս թագաւորը տաճարին անօթները Սասբասարին կը յանձնէ ։

1 Նու Պարսից Կիւրոս թագաւորին
առջի տարին՝ ա Երեմիային բեր-
նովը ըսուած Տէրոջը խօսքը * կա-
տարուելու համար՝, Տէրը Պարսից
Կիւրոս թագաւորին հոգին ար-
թընցուց . բ ու անիկայ իր բոլոր
թագաւորութեանը մէջ հրատա-
րակել տուաւ, ու նաև հրովար-
տակ գրեց՝ ըսելով .
2 Այսպէս կ'ըսէ Կիւրոս Պարսից
թագաւորը . Երկնից Եհովայ Աս-
տուածը երկրիս բոլոր թագաւո-
րութիւնները ինծի տուաւ . ու ա-
նիկայ գ ինծի պատուիրեց, որ Յու-
դայի Երուսաղէմին մէջ անոր տուն
3 մը շինեմ ։ Ձեր մէջը ով որ անոր
բոլոր ժողովուրդէն է, իր Աս-
տուածը իր հետը ըլլայ, ու Յուդա-
յի Երուսաղէմը ելլէ, և Իսրայէլի
Եհովայ Աստուծոյն՝ որ Երուսաղէ-
մի մէջ եղող դ Աստուծոյն տունը
4 շինէ ։ Ու անոր քաղաքացիները՝
այսինքն բոլոր մնացողները՝ իրենց
պանդխտութեանը տեղէն արծա-
թով, ոսկիով, ստացուածքով ու
անասուններով՝ անոր օգնութիւն
ընեն, Երուսաղէմի մէջ եղող
Աստուծոյն տանը համար փափաքած
կամաւոր ընծաներէն 'ի զատ ։
5 Ան ատենը Յուդայի ու Բենիա-
մինի տոհմերուն իշխանները, և
քահանաները ու Ղևտացիները ոտք
ելան ան բոլոր մարդիկներուն
հետ, որոնց հոգին ե Աստուած
արթընցուցեր էր, որ ելլեն ու Ե-
րուսաղէմ եղող Տէրոջը տունը շի-
6 նեն ։ Եւ անոնց բոլորտիքը եղող-
ներուն ամէնը բոլոր կամաւոր ըն-
ծաներէն 'ի զատ՝ արծաթէ աման-
ներով, ոսկիով, ստացուածքով,
ու անասուններով, և պատուա-
կան պարգևներով անոնց † օգնու-
թիւն ըրին՝ ։
7 զ Ու Կիւրոս թագաւորը Տէրոջը
տանը անօթները հանեց, է որոնք
Նաբուգոդոնոսոր Երուսաղէմէն
հանելով՝ իր աստուծոյն տունը
8 դրեր էր . Պարսից Կիւրոս թագա-
ւորը զանոնք Միթրիդատ գանձա-
պետին ձեռքովը հանել տուաւ,
ու զանոնք համրանքով Յուդայի
ը Սասբասար նախարարին յանձ-
9 նեց ։ Եւ աս էր անոնց թիւը .
երսուն ոսկեղէն կոնք, հազար ար-
ծաթեղէն կոնք, քսանուինը դա-
10 նակ, Երսուն ոսկեղէն տաշտ, ու
չորս հարիւր տասը արծաթէ տաշտ՝
երկրորդ կարգէն, և հազարաւոր
11 ուրիշ անօթներ ։ Բոլոր ոսկիէ ու
արծաթէ ամանները հինգ հազար
չորս հարիւր էին ։ Ասոնց ամէնը
Սասբասար՝ Բաբիլոնի գերութե-
նէն Երուսաղէմ ելլողներուն հետը
հանեց ։

## ԳԼ. Բ

1 Գերութենէ դարձող ժողովուրդին, 36 քահանաներուն, 40 Ղևտացիներուն, 43 Նաթանայիմներուն, 55 և Սողոմոնի ծառաներուն որդւոցը թիւը . 62 Նաև ան քահանաներուն՝ որոնք չէին կրնար իրենց ազգահամարը գտնել ։ 64 Բոլոր ժողովքին գումարը իրենց ստացուածներովը ։ 68 Անոնց ընծաները ։

1 Նու ա Բաբիլոնի Նաբուգոդոնոսոր
թագաւորին Բաբիլոն տարած
գերիներէն ելլող բ գաւառի բնա-
կիչները ասոնք էին, որոնք Երու-
սաղէմը ու Յուդան դարձան, ամէն
2 մէկը իր քաղաքը . Ու Զօրաբաբե-
լին, Յեսուին, Նեեմիային, գ Սարա-
յիային, Ռէէլիային, Մուրթ-
քէին, Բաղասանին, Մասփարին,
Բագուէին, Ռէումին, ու Բաա-
նային հետը եկան ։ Եւ աս էր Իս-
րայէլի ժողովուրդին մարդոցը թի-
3 ւը . Փարոսի որդիքը՝ երկու հազար
4 հարիւր եօթանասունուերկու . Սա-
փատիայի որդիքը՝ երեք հարիւր եօ-
5 թանասունուերկու . Արահի որդի-
քը՝ դ եօթը հարիւր եօթանասուն-
6 ուհինգ . ե Փաաթ մովաբի որդի-
քը՝ Յեսուի ու Յովաբի որդիներէն՝
երկու հազար ութը հարիւր տա-
7 սուերկու . Եղամի որդիքը՝ հազար
8 երկու հարիւր յիսունուչորս . Զա-
թուի որդիքը՝ ինը հարիւր քառ-
9 սունուհինգ . Զաքքայի որդիքը՝
10 եօթը հարիւր վաթսուն . զ Բանիի
որդիքը՝ վեց հարիւր քառասունու-
11 երկու . Բեբայիի որդիքը՝ վեց հա-

Ն. Ք. ԳՃ. ԻԵՐ 536

ը Տե՛ս Գլ. ե. 14.

ա Նեեմ. է. 6. ...

բ Դ Թագ. իդ. 14. 15. 16. իե. 11. Բ Մն. Լզ. 20.
գ Նեեմ. է. 7 Կ'ըսուի Ազարիա.

դ Տե՛ս Նեեմ. է. 10.
ե Նեեմ. է. 11.

զ Նեեմ. է. 15 Կ'ըսուի Բանուի.

Ն. Ք. Գ. Ք. իբր 536

12 րիւր քսանուերեք ։ Ազգադի որդի-
քը՝ հազար երկու հարիւր քսան-
13 ուերկու ։ Ադոնիկամի որդիքը՝ վեց
14 հարիւր վաթսունուվեց ։ Բագուէի
որդիքը՝ երկու հազար յիսունու-
15 վեց ։ Ադինի որդիքը՝ չորս հարիւր
16 յիսունուչորս ։ Ատերի որդիքը՝ Ե-
17 զեկիայէն իննսունուութը ։ Բե-
սէիի որդիքը՝ երեք հարիւր քսան-
18 ուերեք ։ եՅորայի որդիքը՝ հա-
19 րիւր տասուերկու ։ Հասումի որ-
դիքը՝ երկու հարիւր քսանուերեք ։
20 զԳաբերի որդիքը՝ իննսունուհինգ ։
21 Բեթլէհեմի որդիքը՝ հարիւր քսան-
22 ուերեք ։ Նետոփայի մարդիկը՝
23 յիսունուվեց ։ Անաթոթի մար-
24 դիկը՝ հարիւր քսանուութը ։ Ա-
զմօթի որդիքը՝ քառասունուեր-
25 կու ։ Կարիաթարիմի, Կեփիրայի
ու Բերոթի որդիքը՝ եօթը հա-
26 րիւր քառասունուերեք ։ Ռամայի
ու Գաբայի որդիքը՝ վեց հարիւր
27 քսանումէկ ։ Մաքմասի մարդիկը՝
28 հարիւր քսանուերկու ։ Բեթէլի ու
Գայիի մարդիկը՝ երկու հարիւր քը-
29 սանուերեք ։ Նաբաւի որդիքը՝ յի-
30 սունուերկու ։ Մակեբիսի որդիքը՝
31 հարիւր յիսունուվեց ։ Միւս ըԵ-
ղամին որդիքը՝ հազար երկու հա-
32 րիւր յիսունուչորս ։ Հարիմի որդի-
33 քը՝ երեք հարիւր քսան ։ Ղոդի,
Ադիդի ու Ովնոյի որդիքը՝ եօթը
34 հարիւր քսանուհինգ ։ Երիքովի
որդիքը՝ երեք հարիւր քառասուն-
35 ուհինգ ։ Սենաայի որդիքը երեք
հազար վեց հարիւր երեսուն ։
36 Քահանաները՝ Յեսուի տունէն՝
ծՅեդայիայի որդիքը՝ ինը հարիւր
37 եօթանասունուերեք ։ իԵմմերի որ-
դիքը՝ հազար յիսունուերկու ։
38 լՓասուրի որդիքը՝ հազար երկու
39 հարիւր քառասունուեօթը ։ խՀա-
րիմի որդիքը՝ հազար տասնուեօթն
էին ։
40 Ղևտացիները՝ Ովդուիայի որդի-
ներէն՝ Յեսուի ու Կադմիէլի որդի-
քը՝ եօթանասունուչորս էին ։
41 Երգեցողները՝ Ասափի որդիքը՝
հարիւր քսանուութն էին ։
42 Դռնապաններուն որդիքը՝ Սեղ-
ղումի որդիքը, Ատերի որդիքը,
Տեղմոնի որդիքը, Ակկուբի որդի-
քը, Ատիտայի որդիքը, Սուբայի
որդիքը՝ ամէնը հարիւր երսունու-
ինն էին ։
43 ծՆաթանայիմները ասոնք էին ։
Սիհայի որդիքը Ասուփայի որդի-
44 քը, Տաբաոթի որդիքը, Կերոսի
որդիքը, Սիայի որդիքը, Փադոնի
45 որդիքը, Ղաբանայի որդիքը, Ա-
գաբայի որդիքը, Ակկուբի որդի-
46 քը, Ագաբի որդիքը, Սաղամէի
47 որդիքը, Անանի որդիքը, Գեդ-
դէլի որդիքը՝ Գաարի որդիքը,
48 Ռէայիայի որդիքը, Ռասինի որ-
դիքը, Նեկոդայի որդիքը, Գա-
49 զամի որդիքը, Ոզայի որդիքը,
Փասէի որդիքը, Բասիի որդիքը,
50 Ասենայի որդիքը, Մոզանիմի որ-
51 դիքը, Նեփուսիմի որդիքը, Բակ-
բուկի որդիքը, Ակուփայի որդիքը,
52 Արուրի որդիքը, կԲասաղոթի որ-
դիքը, Մեհիդայի որդիքը, Արսայի
53 որդիքը, Բարկոսի որդիքը, Սի-
սարայի որդիքը, Թամայի որդի-
54 քը, Նեսիայի որդիքը, Ատեփայի
55 որդիքը ։ հՍողոմոնի ծառաներուն
որդիքը՝ Սոտէի որդիքը, Սոփե-
րաթի որդիքը, ձՓարեդայի որդի-
56 քը, Յեղայի որդիքը, Դերկոնի
57 որդիքը, Գեդդելի որդիքը, Սա-
փատիայի որդիքը, Ատտիլի որդի-
քը, Փաքարաթ ասեբայիմի որդի-
58 քը, ղԱմիի որդիքը ։ Բոլոր ճՆա-
թանայիմները՝ ու մՍողոմոնի ծա-
ռաներուն որդիքը՝ երեք հարիւր
իննսունուերկու էին ։
59 Ու Թեղմեղայէն, Թեղարսայէն,
Քերուբէն, յԱդդանէն ու Եմմերէն
ելլողները ասոնք էին, և իրենց
հայրերուն տունը ու իրենց սերուն-
դը՝ այսինքն Իսրայէլէն ըլլալնին
60 ցուցընելու կարող չեղան ։ Դա-
ղայիայի որդիքը, Տուբիայի որդի-
քը ու Նեկոդայի որդիքը՝ վեց
61 հարիւր յիսունուերկու մարդ ։ Ու
քահանայից որդիներէն՝ Աբաիայի
որդիքը, Ակկուսի որդիքը, Բեր-
զելէի որդիքը, որ նաև նԳաղաա-
դացի Բերզելէին աղջիկներէն կնիկ
առնելով՝ անոնց անունովը կոչուե-
62 ցաւ ։ Ասոնք իրենց ազգաբանու-
թեան գիրքը փնտռեցին, բայց
չկրցան գտնել ։ շՈւ անմաքուր սե-
պուելով՝ քահանայութենէ արգի-
63 լուեցան ։ Ու ո*Աթարսաթան ա-
նոնց ըսաւ ։ Մինչև որ չՈւրիմով
ու Թումիմով քահանայ մը չելլէ,
անոնք պամենասուրբ բաներէն
չուտեն ։
64 ջԲոլոր ժողովքը մէկտեղ՝ քառա-
սունուերկու հազար երեք հարիւր
65 վաթսուն հոգի էր ։ Բաց 'ի անոնց
ծառաներէն ու աղախիններէն, ո-
րոնք եօթը հազար երեք հարիւր
երսունուեօթն էին ։ ու անոնց մէ-
ջը երկու հարիւր այր և կին երգե-
66 ցողներ կային ։ Անոնց ձիերը եօ-
թը հարիւր երսունուվեց, ջորինե-
րը երկու հարիւր քառասունուհինգ,
67 Ուղտերը չորս հարիւր երսունու-
հինգ, ու էշերը վեց հազար եօթը
հարիւր քսան էին ։
68 ռՈւ տոհմերու իշխաններէն ո-
մանք՝ երբոր Երուսաղէմ եղող Տէ-
րոջը տունը գացին, Աստուծոյ

ե Նեեմ. է. 21 Կ'ըսուի Արիփ ։
զ Նեեմ. է. 25 Կ'ըսուի Գաբաւոն ։
ը Տես Հմր 7 ։
ծ Ա Մն. ԻԴ. 7 ։
ի Ա Մն. ԻԴ. 14 ։
լ Ա Մն. Թ. 12 ։
խ Ա Մն. ԻԴ. 8 ։
ծ Ա Մն. Թ. 2 ։

Ն. Ք. Գ. Ք. իբր 536

կ Նեեմ. է. 54 ։
հ Գ Թագ. Թ. 21 ։
ձ Նեեմ. է. 57 ։
ղ Նեեմ. է. 59 Կ'ըսուի Ամոն ։
ճ Յես. Թ. 21, 27 ։ Ա Մն. Թ. 2 ։
մ Գ Թագ. Թ. 21 ։
յ Նեեմ. է. 61 Կ'ըսուի Ադդոն ։
ն Բ Թագ. ԺԷ. 27 ։
շ Թուոց Գ. 10 ։
ո Տես Նեեմ. Ը. 9 ։
* Կամ՝ կառավարիչը
չ Ել. ԻԸ. 30 ։ Թուոց ԻԷ. 21 ։
պ Ղև. ԻԲ. 2, 10, 15, 16 ։
ջ Նեեմ. է. 66 ։
ռ Նեեմ. է. 70 ։

տանը կամաւոր ընծաներ տուին ,
որ զանիկայ իր * տեղը հաստատեն ։
69 Անոնք իրենց կարողութեանը չափ՝
վաթսունումէկ հազար դրամ ոսկի ,
ու հինգ հազար մնաս արծաթ , ու
հարիւր քահանայական պատմու-
ճան տուին ᵃգործաւորութեան
70 գանձին ։ ᵇԵւ քահանաները , ու
Ղեւտացիները , ու ժողովուրդէն ե-
ղողները , երգեցողները , դռնապան-
ները և Նաթանայիմները՝ իրենց
քաղաքներուն մէջը , ու բոլոր Իս-
րայէլը իրենց քաղաքներուն մէջը
բնակեցան ։

Ն. Ք. գՖ. իբր 536
* Կամ՝ տա-ճին կացու-թեանը մէջ.
ᵃ Ա Մն. իգ. 20 ։
ᵇ Գլ. գ. 16, 17 ։ Նեեմ. է. 73 ։

ԳԼ. Գ

1 Սեղանը կը կանգնուի ։ 4 Զոհերը սահեպ կը մատուցուին ։ 7 Գործաւորները կը պատրաստուին ։ 8 Տաճարին հիմնարկութիւնը մեծ ուրախութիւնով ու լացով կ'ըլլայ ։

1 Ու երբոր եօթներորդ ամիսը հա-
սաւ , Իսրայէլի որդիքը իրենց
քաղաքներուն մէջն էին . ու ժողո-
վուրդը մէկ մարդու մը պէս Երու-
2 սաղէմի մէջ ժողվուեցան ։ Եւ
Յովսեդեկեան ᶜՅեսուն , ու անոր
քահանայ եղբայրները , և ᵈՍաղա-
թիելեան Զօրաբաբէլը ու անոր
եղբայրները ելան , ու Իսրայէլի
Աստուծոյն սեղանը շինեցին , որ
անոր վրայ ողջակէզներ մատուցա-
նեն , ᵉինչպէս որ Աստուծոյ մար-
դուն Մովսէսին օրինաց գրքին մէջը
3 գրուած է ։ Ու սեղանը իր † տեղը
շինեցին . վասն զի ան երկիրներուն
ժողովուրդներէն կը վախնային . և
անոր վրայ Տէրոջը ողջակէզներ մա-
տուցին , ᶠառաւօտեան ու երեկո-
4 յեան ողջակէզները ։ ᵍԵւ տաղա-
ւարահարաց տօնը ʰգրուածին պէս
կատարեցին . ու ⁱամէն օրուան
ողջակէզները իրենց թուովը օրէ օր
5 հրամայուածին պէս մատուցին ։ Եւ
անկէ ետքը ʲմշտնջենաւոր ողջակէ-
զը , ու ամսագլուխներու , ու Տէ-
րոջը ամէն սուրբ տօներուն ողջա-
կէզները մատուցին . նաև ան կամա-
ւոր ընծաները՝ որ ամէն մարդ յօ-
ժար սրտով Տէրոջը կը մատուցա-
6 նէր ։ Եօթներորդ ամսուն առաջին
օրէն՝ Տէրոջը ողջակէզներ մատու-
ցանելու սկսան . բայց Տէրոջը տա-
ճարին հիմը տակաւին դրուած չէր ։
7 Եւ քարահատներուն ու հիւսներուն
ստակ , ու Սիդոնացւոց և Տիւրա-
ցւոց ᵏուտելիք ու խմելիք ու եղ
տուին , որ Լիբանանէն ծովով ե-
ղենափայտեր ˡՅոպպէ բերեն ,
ᵐինչպէս որ Պարսից Կիւրոս թա-
գաւորը անոնց արտօնութիւն
տուեր էր ։
8 Եւ անոնց Երուսաղէմ՝ Աստու-
ծոյ տունը գալուն երկրորդ տարին
երկրորդ ամսուն մէջ . Սաղաթի-

ᶜ Անգ. ա. 1 ։ բ. 2 ։ Զաք. գ. 1 ։
ᵈ Մատ. ա. 12 ։ Ղու. գ. 27 ։
ᵉ Օր. ժբ. 5 ։
† Կամ՝ տա-ճին կացու-թեանը մէջ
ᶠ Թու. իը. 3, 4 ։
ᵍ Նեեմ. ը. 14, 17 ։ Զաք. ժդ. 16, 17 ։
ʰ Ղեւ. իգ. 16 ։
ⁱ Թու. իթ. 12, ...։
ʲ Ելք. իթ. 38 ։ Թու. իը. 3, 11, 19, 26 ։ իթ. 2, 8, 13 ։
ᵏ Գործք. ժբ. 20 ։ ... Թագ. ե. 6, 9 ։ բ Մն. բ. 10 ։ Գործ. ժբ. 20 ։
ˡ բ Մն. բ. 16 ։ Գործ. թ. 36 ։
ᵐ Գլ. զ. 3 ։ 535

ելեան Զօրաբաբէլը , ու Յովսեդե-
կեան Յեսուն , և անոնց միւս եղ-
բայրները քահանաները ու Ղեւտա-
ցիները , ու գերութենէ բոլոր Ե-
րուսաղէմ դարձողները՝ գործը
շինելու սկսան , ⁿև քսան տարեկա-
նէն վեր եղող Ղեւտացիները Տէրոջը
տանը գործքին վրայ վերակացու
9 դրին ։ Ու ᵒՅեսու , և անոր որ-
դիքը ու եղբայրները , և Կադմիէլ ,
ու անոր որդիքը , ‡ Յուդայի որդի-
քը , և Ենադադի որդիքը , և ա-
նոնց որդիքը ու եղբայրները՝ Ղե-
ւտացիները՝ գործաւորներուն վրայ
վերակացութիւն ընելու ելան մէկ
մարդու մը պէս ։
10 Ու երբոր ճարտարապետները Տէ-
րոջը տաճարին հիմը դրին , ᵖքա-
հանաները իրենց զգեստները հա-
գած՝ փողերով՝ ու Ղեւտացիները Ա-
սափի որդիքը ծնծղաներով՝ Տէրը
օրհնելու համար կայնեցուցին , ᵠԻս-
րայէլի Դաւիթ թագաւորին կար-
11 գադրութեանը համեմատ . ʳԵւ
փոփոխակի կ'երգէին՝ Տէրոջմէ գո-
հանալով ու անոր շնորհակալու-
թիւն մատուցանելով՝ ˢինչու որ
բարի է , ᵗինչու որ անոր ողորմու-
թիւնը Իսրայէլի վրայ յաւիտեան
է . ու բոլոր ժողովուրդը մեծա-
ձայն աղաղակելով՝ Տէրը օրհնեցին ,
Տէրոջը տանը հիմը դրուելուն հա-
մար ։
12 ᵘԵւ քահանաներէն , ու Ղեւտա-
ցիներէն , ու տոհմերու իշխաննե-
րէն շատերը՝ որոնք ծեր ըլլալով՝
Տէրոջը առջի տունը տեսած էին ,
երբոր իրենց աչքին առջեւը աս տա-
նը հիմը դրուեցաւ , մեծ ձայնով
լացին , ու շատերը իրենց ուրա-
խութենէն ձայներնին վերցնելով
13 աղաղակեցին . Ու ժողովուրդը ու-
րախութեան աղաղակին ձայնը ու
բազմութեանը լալուն ձայնը իրար-
մէ չէր կրնար որոշել . վասն զի
բազմութիւնը մեծ ցնծութեան
ձայնով կ'աղաղակէր . ու ձայներ-
նին մինչև հեռու տեղուանք կը
լսուէր ։

ԳԼ. Դ

1 Թշնամիները՝ տաճարին շինութեանը մէջ հրէից հետ մասնակից ըլլալու յօժարութիւն ցուցնելու համար , կը ջանան որ ան շինութիւնը խափանեն ։ 7 Արտաշեսին նամակ կը գրեն ։ 17 Արտաշեսին խրկած հրովարտակը ։ 23 Շինութիւնը կը խափանուի ։

1 Ու ᵛՅուդայի ու Բենիամինի թշ-
նամիները երբոր լսեցին որ ʷգե-
րութենէ ելողները՝ Իսրայէլի Տէր
Աստուծոյն տաճարը կը շինեն ,
2 Զօրաբաբէլին ու նահապետներուն
մօտեցան , ու անոնց ըսին . Մենք
ալ ձեզի հետ շինենք . քանզի մենք

Ն. Ք. գՖ. 535
ⁿ Ա Մն. իգ. 24, 27 ։
ᵒ Գլ. բ. 40 ։
‡ Կամ՝ Ովդուիայի . տես Գլ. բ. 40 ։
ᵖ Ա Մն. ժզ. 5, 6, 42 ։
ᵠ Ա Մն. զ. 31 ։ ժզ. 4 ։ իե. 1 ։
ʳ Ելք. ժե. 21 ։ բ Մն. է. 3 ։ Նեեմ. ժբ. 24 ։
ˢ Ա Մն. ժզ. 34 ։ Սաղ. ճլզ. 1 ։
ᵗ Ա Մն. ժզ. 41 ։ Երեմ. լգ. 11 ։
ᵘ Տես Անգ. բ. 3 ։
ᵛ Տես համր 7—9 ։
ʷ Եբր. գերութեան որդիքը

Ն · ք · գՔ · Իրր 678

ու ձեզի պէս ձեր Աստուածը կը
խնդրենք , ու մեզ հոս բերող ՇԱ-
սորեստանի Ասորդան Թագաւորին
օրերէն 'ի վեր՝ անոր զոհ կը մա-
3 տուցանենք ։ Բայց Զօրաբաբէլը ,
ու Յեսուն , ու Իսրայէլի միւս նա-
հապետները անոնց ըսին . Չվայ-
լեր ձեզի ու մեզի որ միասին մեր Աս-
տուծոյն տուն շինենք . հապա Իս-
րայէլի Տէր Աստուծոյն տունը մի-
նակ մենք պիտի շինենք , ինչպէս
որ Պարսից Թագաւորը՝ Կիւրոս
4 Թագաւորը մեզի հրամայեց ։ Եւ
Ի ան երկրին ժողովուրդը՝ Յուդայի
ժողովուրդին ձեռքերը կը թուլցը-
նէին , ու զանոնք՝ շինելէն կը խա-
5 փանէին ։ Եւ անոնց խորհուրդը
խափանելու համար՝ վարձքով ա-
նոնց դէմ խորհրդականներ բռնե-
ցին , Պարսից Կիւրոս Թագաւորին
բոլոր օրերը , ու մինչև Պարսից
Դարեհ Թագաւորին Թագաւորու-
529 6 Թեանը ժամանակը ։ Եւ Ասուե-
րոսին Թագաւորութեան ատենը՝
անոր Թագաւորութեանը սկիզբը՝
Յուդայի ու Երուսաղէմի բնակչացը
դէմ ամբաստանութեան գիր գրե-
ցին ։
522 7 Եւ Արտաշէսին օրերը՝ Բեսե-
ղամ , Միթրիդատ , Տաբէէլ , ու
ասոնց ուրիշ ընկերները՝ Պարսից
Արտաշէս Թագաւորին գրեցին . ու
Նամակին գիրը *Ասորերէն գրուած
էր , ու մեկնութիւնը *Ասորերէն
8 էր ։ Հռէում հրամանատարը , ու
Սամսայ դպիրը՝ Երուսաղէմի դէմ
աս կերպով նամակ մը գրեցին Ար-
տաշէս Թագաւորին ։
9 Ան ատենը Հռէում հրամանա-
տարը , ու Սամսայ դպիրը , և ա-
նոնց ուրիշ ընկերները Դինացիք ,
Ափարսաթաքացիք , Տարփաղե-
ցիք , Ափերսացիք , Արքուեցիք ,
Բաբիլոնացիք , Շուշանացիք , Դա-
10 ւեցիք , Եղամացիք , Եւ մնացած
ազգերը՝ որոնք մեծ ու պատուական
Իրր 678 Ասենափարը փոխադրեց ու Սամա-
րիայի քաղաքներուն մէջը բնակե-
ցուց , ու միւսները՝ որ Գետին
աստի կողմը կը գտնուին , և այ-
11 լըն ։ Աս է ան նամակին օրինակը՝
522 որ Արտաշէս Թագաւորին խրկե-
ցին ։
Գետին աստի կողմը բնակող
12 քու ծառաներդ , և այլն ։ Թագա-
ւորիդ յայտնի ըլլայ , որ ձեր կող-
մանէ մեզի վեր եկող Հրէաները Ե-
րուսաղէմ եկան , ու պարիսպներ
կանգնելով , ու հիմեր ձգելով՝ ան
ապստամբ ու անիրաւ քաղաքը կը
13 շինեն ։ Հիմա Թագաւորիդ յայտնի
ըլլայ , որ եթէ աս քաղաքը Նորէն
շինուի , ու անոր պարիսպները

կանգնուին , անոնք Ի հարկ՝ տուրք
ու մաքս պիտի չտան . և աս պատ-
ճառով Թագաւորներուն վնաս
14 տուած պիտի ըլլաս ։ Ու մեր † ռո-
ճիկը պալատէն ըլլալուն համար՝
մեզի չվայլեր որ Թագաւորին վնասը
տեսնենք . անոր համար աս Նամակը
խրկեցինք , ու Թագաւորիդ իմա-
15 ցուցինք , Որ քու հայրերուդ յի-
շատակաց գրքին մէջը փնտռուի ,
որ ան յիշատակաց գրքին մէջը
գտնես ու իմանաս թէ ան քաղաքը
ապստամբ՝ և Թագաւորներուն և
գաւառներուն վնասակար քաղաք
մը եղած է , և թէ հին ատենը ա-
նոր մէջ դաւաճանութիւն ըրած
են , ու անոր համար աս քաղաքը
16 կործանուեր է ։ Մենք Թագաւո-
րիդ կ'իմացընենք՝ որ եթէ աս քա-
ղաքը շինուի , ու անոր պարիսպ-
ները հաստատուին , աս պատճա-
ռով Գետին աստի կողմը բաժին
պիտի չունենաս ։
17 Իսկ Թագաւորը՝ Հռէում հրա-
մանատարին , և Սամսայ դպիրին ,
ու Սամարիայի մէջ բնակող անոնց
մնացած ընկերներուն , ու Գետին
անդիի կողմը եղող մնացածնե-
րուն՝ հրովարտակ խրկեց աս խօսքե-
րով ։
18 Ողջոյն , և այլն . Մեզի խրկած
նամակնիդ՝ իմ առջևս յայտնապէս
19 կարդացուեցաւ . Ու ես հրաման
ըրի , ու փնտռեցին , և գտան որ՝
ան քաղաքը հին ատենէն 'ի վեր
Թագաւորներու դէմ դրեր է , ու
անոր մէջը ապստամբութիւն ու
20 դաւաճանութիւն եղեր է ։ Ու Ե-
րուսաղէմի մէջ զօրաւոր Թագա-
ւորներ եղած են , որ բոլոր ըԳետին
Ի անդիի կողմը եղողներուն վրայ կը
տիրէին . ու անոնց՝ հարկ , տուրք
ու մաքս կը տրուէր ։
21 Հիմա պատուէր տուէք՝ որ ան
մարդիկները արգիլեն . ու աս քա-
ղաքը չշինուի , մինչև որ իմ կող-
մանէս մէկ հրովարտակ մը տրուի ։
22 Եւ զգոյշ եղէք որ աս բանիս ան-
հոգութիւն չընէք . չըլլայ որ չա-
րութիւնը շատնայ , ու Թագաւոր-
ներուն վնաս տան ։
23 Ու երբոր Արտաշէս Թագաւորին
նամակին օրինակը՝ Հռէումին ու
Սամսայ դպիրին , և անոնց ընկեր-
ներուն առջևը կարդացուեցաւ ,
արտորնօք Երուսաղէմ գացին Հր-
էաներուն , և զանոնք բռնու-
24 թեամբ չինէլէն արգիլեցին ։ Ան
ատենը Երուսաղէմ եղող Աստու-
ծոյ տանը գործը արգիլուեցաւ .
ու մինչև Պարսից Դարեհ Թագա-
ւորին Թագաւորութեանը երկրորդ
տարին արգիլուած մնաց ։ 520

Left margin notes: Ե Դ Թագ · ԺԷ · 24 · 32 · 33 · ԺԹ · 37 · Հմր 10 · — Գ Նեեմ · Բ · 20 · — Դ Գլ · Ա · 1 · 2 · 3 · — Ե Գլ · Գ · 3 · 534 — * Կամ՝ Քաղդէարէն.— Զ Տես Դ Թագ · ԺԷ · 30 · 31 ·

Right margin notes: Ն · Ք · գՔ · 522 — Ե Գլ · Է · 24 · — † Քաղդ · աղը — Է Ծն · ԺԵ · 18 · Յես · Ա · 4 · — Ը Գ Թագ · Դ · 21 · Սաղ · Հր · Տ ·

Ն. Ք. ԴԲ.
520

ԳԼ. Ե

1 Զօրաբաբէլ ու Յեսու՝ Անգէէն ու Զաքարիայէն յորդորուելով՝ տաճարին շինութիւնը յառաջ կը տանին. 3 Թաթանայի ու Սաթրաբուզան չեն կրնար Հրեաները արգիլել. 6 Անոնք՝ Դարեհ թագաւորին նամակ կը գրեն Հրէից դէմ.

1 Նու ա Անգէ մարգարէն, ու Ադդովի
որդին բ Զաքարիա մարգարէն՝
Իսրայէլի Աստուծոյն անունովը
մարգարէութիւն ըրին Յուդայի ու
Երուսաղէմի մէջ եղող Հրեանե-
2 րուն. Ան ատենը գ Սաղաթիէլեան
Զօրաբաբէլը, ու Յովսեդեկեան
Յեսուն ելան, ու Երուսաղէմի մէջ
եղող Աստուծոյ տունը շինելու ըս-
կսան. և Աստուծոյ մարգարէները
անոնց հետը ըլլալով՝ անոնց օգ-
նութիւն կ՚ընէին.
3 Ան ատենը Եփրատ գետին ասդին
կողմի իշխանը դ Թաթանային. ու
Սաթրաբուզանը իրենց ընկերնե-
րովը անոնց եկան. և այսպէս ը-
սին. ե Ո՞վ ձեզի հրաման տուաւ
որ աս տունը շինէք. ու աս պա-
4 րիսպները կանգնէք. զ Ան ատենը
անոնց ըսինք թէ աս շէնքը շինող
մարդիկներուն անունները ինչ է-
5 ին. Բայց է Աստուծոյ աչքը Հրէից
ծերերուն վրայ էր. ու զանոնք
չարգիլեցին, մինչև որ բանը Դա-
րեհին հասնի, ու անկէ ը աս բանիս
համար հրովարտակ բերել տան.
6 Աս է ան նամակին օրինակը որ
Գետին ասդին կողմի իշխանը Թա-
թանային, ու Սաթրաբուզանը,
ու Գետին ասդին կողմը եղող թ ա-
նոնց ընկերները Ափարսաքացիք՝
7 Դարեհ թագաւորին խրկեցին. Ու
իրենց անոր խրկած նամակին մէջը
այսպէս գրուած էր.
Դարեհ թագաւորին շատ բարև.
8 Թագաւորին յայտնի ըլլայ, որ
Հրէաստանի գաւառը՝ մեծ Աստու-
ծոյն տունը գացինք. ու անիկայ
մեծ քարերով կը շինուի, և անոր
պատերուն մէջը փայտեր կը դրուի.
ու գործը շուտով կը բանուի, ու
9 անոնց ձեռքովը կը յաջողուի. Ու
ան ծերերուն հարցուցինք, ու ա-
նոնց այսպէս ըսինք. ժ Ո՞վ ձեզի
հրաման տուաւ որ աս տունը շի-
նէք, ու աս պարիսպները կանգ-
10 նէք. Ու քեզի իմացընելու հա-
մար՝ անոնց անուններն ալ հար-
ցուցինք, որ անոնց առաջնորդ
եղող մարդոց անունները ձեզի գը-
11 րենք. Ու անոնք մեզի այսպէս
պատասխան տուին ու ըսին. Մենք
երկնից ու երկրի Աստուծոյն ծա-
ռաներն ենք. ու շատ տարիներէ
առաջ շինուած տունը կը շինենք,
որ զանիկայ Իսրայէլին մէկ մեծ
թագաւորը շինեց ու լմնցուց.
12 Բայց ժա մեր հայրերը՝ երկինքին Աս-
տուածը բարկացընելնուն համար.
զանոնք Բաբելոնի թագաւորին՝
ժբ Քաղդէացի Նաբուգոդոնոսորին
ձեռքը մատնեց. ան ալ աս տունը
աւրեց, ու ժողովուրդը Բաբելոն
13 գերի տարաւ. Բայց ժգ Բաբելո-
նի Կիւրոս թագաւորին առջի տա-
րին՝ Կիւրոս թագաւորը աս Աս-
տուծոյ տունը շինելու հրաման
14 տուաւ. Ու ժդ Աստուծոյ տանը ոս-
կեղէն ու արծաթեղէն անօթներն
ալ՝ որոնք Նաբուգոդոնոսոր՝ Ե-
րուսաղէմի տաճարէն հանելով,
Բաբելոնի տաճարը տարեր էր,
Կիւրոս թագաւորը Բաբելոնի տա-
ճարէն հանեց, ու ժե Սասբասար ա-
նունով մէկու մը յանձնեց, որն որ
15 նախարար ըրաւ, Ու անոր ըսաւ.
Աս անօթները առ, գնա զանոնք
Երուսաղէմ եղող տաճարը տար.
ու Աստուծոյ տունը իր տեղը շի-
16 նուի. Ան ատենը Սասբասար ե-
կաւ, ու Երուսաղէմ եղող ժզ Աս-
տուծոյ տանը հիմը ձգեց. և ան
ատենէն մինչև հիմա կը շինուի,
17 ժէ բայց չէ լմնցած. Ու հիմա թէ
որ թագաւորը կը հաճի, հոն Բա-
բելոն եղող թագաւորին ժը գանձա-
տանը մէջ փնտռուի, թէ արդեօք
Կիւրոս թագաւորը հրաման տուե՞ր
է որ Երուսաղէմի մէջ աս Աստու-
ծոյ տունը շինուի. ու թագաւորը
աս բանիս վրայով իր կամքը մեզի
*հասկըցընէ.

ԳԼ. Զ

1 Դարեհ թագաւորը Կիւրոսին հրովարտակը գտնելով՝ նոր հրովարտակ մը կը խրկէ շինութիւնը յառաջ տանելու համար. 13 Թշնամիներուն օգնութեամբը և մարգարէներուն առաջնորդութեամբը տաճարը կը լմննայ. 16 Նաւակատեաց 19 ու զատկին տօնը կը կատարուի.

1 Ան ատենը Դարեհ թագաւորը
հրաման ըրաւ. ու հոն Բաբելո-
նի ա դիւանին մէջը փնտռեցին, ուր
2 որ գանձերը կը պահուէին. Ու
Մարաց գաւառին մէջը եղող † Եկ-
բատանայի պալատին մէջ տոմս մը
գտնուեցաւ, որուն մէջ աս կեր-
պով գրուած յիշատակարան մը
կար.
3 Կիւրոս թագաւորին առջի տա-
րին, Կիւրոս թագաւորը՝ Երուսա-
ղէմի մէջ եղող Աստուծոյ տանը
համար հրաման տուաւ, որ ան տու-
նը շինուի, ուր որ զոհ կը մատու-
ցանեն. և անոր հիմերը ամուր
ըլլան. անոր բարձրութիւնը վաթ-
սուն կանգուն, ու լայնութիւնը
4 վաթսուն կանգուն, բ Իրեք կարգ
մեծ քարերէ, ու մէկ կարգ նոր

Left margin: ա Անգ. ա. 1. բ Զաք. ա. 1. գ Գլ. գ. 2. դ Հմր 6. Գլ. գ. 6. ե Հմր 9. զ Հմր 10. է Տես Գլ. է. 6. 28. Սաղ. լգ. 18. ը Գլ. զ. 6. 519 թ Գլ. դ. 9. ժ Հմր 3. 4.

Right margin: Ն. Ք. ԴԲ. 519 ժա Բ Մնաց. լզ. 16. 17. ժբ Դ Թագ. իդ. 2. իե. 8. 9. 11. ժգ Գլ. ա. 1. 536 ժդ Գլ. ա. 7. 8. զ. 5. ժե Անգ. ա. 14. ը Զ. 21. ժզ Գլ. գ. 8. 10. ժէ Գլ. զ. 15. ժը Գլ. զ. 1. 2. * Բառ. խրկէ. 519 ա Գլ. ե. 17. † Բառ. Ախմեթայի բ Գ Թագ. զ. 36.

Ն · Ք · ԶՔ · 519

փայտէ ըլլայ . ու անոր ծախքը
5 թագաւորին տունէն տրուի . Եւ
Նաբուգոդոնոսորին Երուսաղէմի
տաճարէն հանած ու Բաբելոն բե-
րած՝ Աստուծոյ տանը ոսկեղէն
ու արծաթեղէն անօթներն ալ ետ
տրուին , ու Երուսաղէմ եղող տա-
ճարը՝ իրենց տեղը տարուին ու
Աստուծոյ տունը դրուին ։

ա Գլ · ա · 7 · Ց · ե · 14 ·

6 Եւ հիմա՝ Գետին անդիի կողմի
իշխանը Թաթանայի , Սաթրա-
բուզան , ու Գետին անդիի կողմը
եղող անոնց ընկերները Ափարսա-
7 քացիք՝ անկէ ետ քաշուեցէք . Աս
Աստուծոյ տանը գործքը թող
տուէք . Հրէից նախարարը ու Հը-
րէից ծերերը աս Աստուծոյ տունը
8 թող իր տեղը շինեն ։ Եւ ես
հրամանը կու տամ , որ գիտնաք թէ
Հրէից ծերերուն ինչ պիտի ընէք
աս Աստուծոյ տանը շինութեանը
համար , այսինքն արքունի գանձէն՝
Գետին անդիի կողմէն ժողվուած
հարկէն՝ ան մարդիկներուն ծախքը
շուտով տրուի , որ արգելք մը չու-
9 նենան ։ Եւ անոնց ինչ որ պէտք
ըլլայ , թէ զուարակներ , թէ խո-
յեր և թէ գառներ՝ երկնից Աստու-
ծոյն ողջակէզներու համար , նաեւ
ցորեն , աղ , գինի ու եղ՝ ամէն օր
անոնց տրուի անպակաս , Երուսա-
ղէմի մէջ եղող քահանաներուն

բ Գլ · ե · 3 ·

10 խօսքովը , Որ երկնից Աստուծոյն
անուշահոտ պոհեր մատուցանեն , և
թագաւորին ու անոր որդւոցը
11 կենացը համար աղօթք ընեն ։ Ու
ես կը հրամայեմ որ՝ ով որ աս
խօսքիս դէմ կենայ , անոր տունէն
փայտ մը քակելով տնկեն , ու ան
մարդը անոր վրայ գամեն . Ու աս
բանիս համար անոր տունը աղբա-
12 նոց ըլլայ ։ Եւ ան Աստուածը՝ որ
իր անունը հոն դրեր է , թող կոր-
ծանէ ամէն թագաւորը ու ժողո-
վուրդը , որ ձեռք կ'երկնցընէ աս
հրամանիս դէմ կենալու , ու Երու-
սաղէմի մէջ եղող Աստուծոյ տունը
աւրելու ։ Ես Դարեհս աս հրամա-
նը ըրի , թող շուտով 'ի գործ
դրուի ։

ե Գլ · է · 23 · Երեմ · իթ · 7 · զ Տիմ · բ · 1 , 2 ·
է Դան · բ · 5 · գ · 29 ·
ը Գ Թագ · թ · 3 ·

13 Ան ատենը Գետին աստիի կողմի
իշխանը Թաթանային , Սաթրա-
բուզանը , և անոնց ընկերները՝
Դարեհ թագաւորին խրկած հրա-
14 մանը շուտով կատարեցին ։ Եւ
Հրէից ծերերը կը շինէին , ու կը
յաջողէին , Անգէ մարգարէին ու
Ադդովի որդւոյն Զաքարիային
մարգարէութիւնովը . ու անոնք՝
Իսրայէլի Աստուծոյն հրամանովը ,
և Պարսից Կիւրոս , ու Դարեհ ,
ու Արտաշէս թագաւորին հրա-
15 մանովը շինեցին լմնցուցին ։ Եւ աս

թ Գլ · ե · 1 , 2 ·
ժ Գլ · ա · 1 · ե · 13 · Հմր 3 ·
ի Գլ · դ · 24 ·
լ Գլ · է · 1 ·

տունը՝ Ադար ամսուն երրորդ օրը՝
Դարեհ թագաւորին թագաւորու-
թեանը վեցերորդ տարին լմնցաւ ։

Ն · Ք · ԶՔ · 515

16 Ու Իսրայէլի որդիքը՝ քահա-
նաները , ու Ղեւտացիները , ու միւս
գերութենէ ելլողները՝ ուրախու-
թեամբ Աստուծոյ տանը նաւա-
17 կատիքը ըրին ։ Եւ Աստուծոյ տա-
նը նաւակատիքին համար՝ հարիւր
զուարակ , երկու հարիւր խոյ , չորս
հարիւր գառն , ու բոլոր Իսրայէլին
մեղքի պատարագ ըլլալու համար՝
Իսրայէլի ցեղերուն թուովը՝ այծե-
րէն տասուերկու նոխազ մատու-
18 ցին ։ Ու Երուսաղէմի մէջ Աստու-
ծոյ սպասաւորութեանը վրայ՝ քա-
հանաները իրենց կարգերուն մէջ
ու Ղեւտացիները իրենց դասերուն
մէջ կայնեցուցին , ինչպէս որ
Մովսէսին գրքին մէջը գրուած է ։
19 Ու գերութենէ ելլողները՝ Նաւա-
ջին ամսուն չորեքտասաներորդ օրը
20 զատիկը ըրին . Քանզի քահանա-
ները ու Ղեւտացիները մէկտեղ
սրբուեցան , ու ամէնքն ալ մա-
քուր եղան . ու բոլոր գերութենէ
ելլողներուն համար , և իրենց եղ-
բարցը քահանաներուն համար , ու
իրենց համար զատիկը մորթեցին .
21 Ու գերութենէ դարձող Իսրայէլի
որդիքը , ու Իսրայէլի Տէր Աս-
տուածը փնտռելու համար անոնց
եկողները , որ ան երկրին ազգերուն
պղծութենէն զատուեր էին՝ ամէնն
22 ալ կերան ։ Եւ եօթը օր բաղար-
ջակերաց տօնը կատարեցին ուրա-
խութեամբ . վասն զի Տէրը զանոնք
ուրախացուց . ու Ասորեստանի
թագաւորին սիրտը անոնց դար-
ձուց , որ Աստուծոյ՝ Իսրայէլի Աս-
տուծոյն տանը գործին մէջ անոնց
ձեռքը ուժովցընէ ։

խ Գ Թագ · ը · 63 · բ Մն · է · 5 ·
ծ Գլ · ը · 35 ·
կ Ա Մն · իգ · 1 ·
հ Ա Մն · իդ · 6 ·
ձ Թուոց · գ · 6 · ը · 9 ·
ղ Ել · ժբ · 6 ·
ճ բ Մն · լ · 15 ·
մ բ Մն · լե · 11 ·
յ Գլ · թ · 11 ·
ն Ել · ժբ · 15 · ժգ · 6 · բ Մն · լ · 21 · լե · 17 ·
շ Գ Թագ · իգ · 29 · բ Մն · լգ · 11 · Գլ · ա · 1 · Հմր 6 · 22 ·
ո Առակ · իա · 1 ·

## ԳԼ · Է

1 Եզրաս Երուսաղէմ կ'երթայ . 11 Արտաշէս թագաւորէն մարդասիրական հրովարտակ մը ձեռքը ունենալով ։ 27 Եզրաս աս իրեն եղած շնորհքին համար՝ Տէրը կ'օրհնէ ։

457

1 Եւ աս բաներէն ետքը՝ Պարսից
թագաւորին Արտաշէսին թա-
գաւորութեանը ատենը՝ Եզրաս՝
Սարայիայի որդին , որ էր Ազա-
րիայի որդին , որ էր Քեղկիայի որ-
2 դին , Որ էր Սեղղումի որդին , որ
էր Սադովկի որդին , որ էր Աքի-
3 տովբի որդին , Որ էր Ամարիայի
որդին , որ էր Ազարիայի որդին , որ
4 էր Մարիօթի որդին , Որ էր Զա-
րիայի որդին , որ էր Ոզիի որդին ,
5 որ էր Բոկկիի որդին , Որ էր Աբի-
սուայի որդին , որ էր Փենեհեսի
որդին , որ էր Եղիազարի որդին , որ
էր մեծ քահանային Ահարոնին որ-

պ Նեեմ · բ · 1 ·
ջ Ա Մն · զ · 14 ·

Ն. ք. զՔ. 457

ա Հմր 11, 12, 21. բ Հմր 9. Գւ. ը. 22, 31. գ Գւ. ը. 1. դ Գւ. ը. 15, 20. ե Գւ. բ. 43, ը. 20.

6 գին էր, Ա՛ս Եզրաս Բաբելոնէն ե-
լաւ. ու անիկայ Իսրայէլի Տէր Աս-
տուծոյն տուած Մովսէսին [ա]օրի-
նացը արագագիր դպիրն էր. ու
[բ]իր Տէր Աստուծոյն ձեռքը իր
վրայ ըլլալուն համար՝ ամէն խընդ-
րածը թագաւորը անոր կու տար։
7 [գ]Եւ Արտաշէս թագաւորին եօթ-
ներորդ տարին՝ Իսրայէլի որդի-
ներէն, քահանաներէն, ու [դ]Ղև-
տացիներէն, ու երգեցողներէն, և
դռնապաններէն, ու [ե]Նաթանա-
յիմներէն ոմանք Երուսաղէմ ելան։
8 Եւ անիկայ հինգերորդ ամսուն
մէջ՝ թագաւորին եօթներորդ

Իրր 457

9 տարին՝ Երուսաղէմ եկաւ. Քան-
զի առաջին ամսուն առաջին օրը՝
Բաբելոնէն ելլելու սկսաւ. ու
[զ]Աստուծոյ բարի ձեռքը անոր
վրայ ըլլալով՝ հինգերորդ ամսուն
առաջին օրը՝ Երուսաղէմ եկաւ։

զ Հմր 6. Նեեմ. բ. 8, 18. է Սաղ. ճժթ. 45. ը Հմր 6, 25. բ Օր. լգ. 10. Նեեմ. ը. 1-8. Մաղ. բ. 7.

10 Վասն զի Եզրաս իր սիրտը պատ-
րաստեց՝ որ [է]Տէրոջը օրէնքը փըն-
տռէ, ու կատարէ, ու Իսրայէլի
մէջ [ը]օրէնք ու դատաստան սորվե-
ցընէ։
11 Եւ ասիկայ է ան նամակին օրի-
նակը՝ որն որ Արտաշէս թագաւորը
տուաւ Եզրաս քահանային ու դպի-
րին, որ Տէրոջը Իսրայէլին տուած
պատուիրանաց և օրինաց խօսքե-
րուն գրիչն էր։

թ Եզեկ. իզ. 7. Դան. բ. 37.

12 [թ]Թագաւորաց թագաւորը Ար-
տաշէս՝ Եզրաս քահանային՝ երկնից
Աստուծոյն օրինացը կատարեալ
13 գրչին, և այլն։ Հրաման կու տամ
որ՝ իմ թագաւորութեանս մէջը ե-
ղող Իսրայէլի ժողովուրդէն, ու
անոր քահանաներէն, ու Ղևտա-
ցիներէն՝ ամէն իրենց կամքովը Ե-
րուսաղէմ ելլել ուզողները քեզի
14 հետ ելլեն. Վասն զի դուն թա-
գաւորին ու անոր [ժ]եօթը խորհըր-
դականներուն կողմանէ կը խըր-
կուիս, որ քու ձեռքդ եղող քու
Աստուծոյդ օրէնքովը Յուդան ու
15 Երուսաղէմը քննես, Եւ տանիս
ան արծաթը ու ոսկին, որն որ
թագաւորը ու անոր խորհրդական-
ները՝ իրենց կամքովը ընծայ տուին
Իսրայէլի Աստուծոյն՝ [ի]որուն բնա-
կութիւնը Երուսաղէմի մէջ է.
16 [լ]Նաև Բաբելոնի բոլոր գաւառին
մէջը գտած բոլոր արծաթդ ու ոս-
կիդ, որն որ ժողովուրդը ու քա-
հանաները Երուսաղէմի մէջ եղող
իրենց Աստուծոյն տանը համար՝
[խ]կամաւոր ընծայի պէս պիտի մա-
17 տուցանեն, Որ ան ստակով անյա-
պաղ՝ զուարակներ, խոյեր, գառ-
ներ, ու անոնց [ծ]հացի ընծաները ու
թափելու նուէրները ծախու առ-
նես, ու [կ]զանոնք Երուսաղէմ ե-

ժ Եսթ. ա. 14. ի բ Մն. գ. 2. Սաղ. ճլե. 21. լ Գւ. ը. 25. խ ա Մն. իթ. 6, 9. ծ Թւ. ժե. 4-13. կ բ Օր. ժբ. 5, 11.

ղող ձեր Աստուծոյն տանը սեղա-
18 նին վրայ մատուցանես. Եւ մնա-
ցած արծաթով ու ոսկիով՝ քեզի
ու քու եղբայրներուդ ինչ որ պատ-
շաճ կ'երևնայ ընել, ձեր Աստու-
19 ծոյն կամացը համեմատ ընէք։ Եւ
ան անօթները, որ քու Աստուծոյդ
տանը պաշտօնին համար՝ քեզի տը-
րուեցան, զանոնք Երուսաղէմի Աս-
20 տուծոյն առջև՛ը դուն յանձնէ։ Եւ
ուրիշ ինչ որ քու Աստուծոյդ տա-
նը համար պէտք ըլլայ, որ քեզի կը
վայլէ տալ, զանիկայ թագաւորին
21 գանձատունէն տաս։ Ու ես՝ Ար-
տաշէս թագաւորս՝ ձեզի՝ Գետին
անդիի կողմը եղող բոլոր գանձա-
պետներուդ հրաման կու տամ, որ
Եզրաս քահանան՝ երկնից Աստու-
ծոյն օրինացը դպիրը ինչ որ ձեզմէ
22 ուզէ, անմիջապէս *տրուի. Մին-
չև հարիւր տաղանդ արծաթ, մին-
չև հարիւր քոռ ցորեն, ու մինչև
հարիւր մար գինի, ու հարիւր մար
եղ, ու աղ՝ առանց †չափը որոշե-
23 լու"։ Երկնից Աստուածը ինչ որ կը
հրամայէ, շուտով 'ի գործ դրուի
երկնից Աստուծոյն տանը համար,
որ չըլլայ թէ թագաւորին ու անոր
որդւոցը թագաւորութեանը վրայ
24 բարկութիւն գայ։ Եւ ձեզի յայտ-
նի ըլլայ, որ բոլոր քահանաներէն,
Ղևտացիներէն, երգեցողներէն,
դռնապաններէն, ու Նաթանա-
յիմներէն, և աս Աստուծոյ տանը
սպասաւորներէն՝ հարկ, տուրք ու
25 մաքս առնելու հրաման չկայ։ Եւ
դուն ո՛վ Եզրաս՝ քու Աստուծոյդ
իմաստութեամբը՝ որ դուն ունիս,
[հ]Դատաւորներ ու իշխաններ դիր,
որ Գետին մէկալ կողմը եղող բոլոր
ժողովուրդը՝ այսինքն քու Աստու-
ծոյդ օրէնքը ամէն գիտցողները դա-
տեն. ու [ձ]չգիտցողներուն սորվե-
26 ցուցէ՛ք։ Եւ ո՛վ որ քու Աստու-
ծոյդ օրէնքին համեմատ՝ ու թագա-
ւորին օրէնքին համեմատ չընէ, ան-
յապաղ անոր դատաստանը 'ի գործ
դրուի, կամ մահուամբ, կամ
աքսորով, կամ տուգանքով և կամ
բանտարկութեամբ։
27 [ղ]Մեր հայրերուն Տէր Աստուածը
օրհնեա՜լ ըլլայ, որ Երուսաղէմի մէջ
եղող Տէրոջը տունը փառաւորելու
համար՝ [ճ]աս բանը թագաւորին սըր-
28 տին մէջ դրաւ, Եւ [մ]թագաւորին
ու անոր խորհրդականներուն, ու
թագաւորին բոլոր զօրաւոր իշ-
խաններուն առջևը՝ ինծի շնորհք
գտնել տուաւ. և [յ]իմ Տէր Աս-
տուծոյս ձեռքը իմ վրաս ըլլալուն
համար՝ զօրացայ, ու Իսրայէլէն
իշխաններ ժողվեցի, որ ինծի հետ
ելլեն։

Ն. ք. զՔ. Իրր 457

* Բառ. կատարուի.
† Բառ. գրելու.
հ Ել. ժը. 21, 22. բ Օր. ժզ. 18.
ձ Հմր 10. բ Մն. ժէ. 7. Մաղ. բ. 7. Մատ. իգ. 2, 3.
ղ ա Մն. իթ. 10.
ճ Գւ. զ. 22.
մ Գւ. թ. 9.
յ Տես գլ. ե. 5. Հմր 6, 9. Գւ. ը. 18.

Նա. ք. չք. 457

## ԳԼ. Ը

1 Եզրասին ընկերները՝ որոնք Բաբիլոնէն ետ դարձան. 15 Եզրաս՝ Ադդովին մարդ կը ղրկէ, անկէ տաճարին համար պաշտօնեաներ ուզելով. 21 ծոմ կը պահէ. 24 գանձերը քահանայից պահպանութեանը կը յանձնէ. 31 Ահավայէն Երուսաղէմ կու գան. 33 Գանձերը տաճարին մէջը կը կշռուին. 36 Թագաւորին հրովարտակը իշխաններուն կը յանձնուի.

1 Ու Արտաշէս թագաւորին թա-
գաւորութեանը ատենը՝ ինծի
հետ Բաբիլոնէն ելլողներուն տոհ-
մապետները, ու համրանքը ասոնք
2 են. Փենէհեսի որդիներէն՝ Գեր-
սոն, Իթամարի որդիներէն՝ Դա-
նիէլ, Դաւիթի որդիներէն՝ [ա]Քետ-
3 տուս, Սեքենիայի որդիներէն՝
[բ]Փարոսի որդիներէն՝ Զաքարիա,
ու անոր հետ հարիւր յիսուն էրիկ
4 մարդ համրուեցան. Փաաթ Մովա-
բի որդիներէն՝ Զարիայի որդին
Եղիովէնայի, ու անոր հետ երկու
5 հարիւր էրիկ մարդ. Սեքենիայի
որդիներէն՝ Յազիէլի որդին, ու ա-
նոր հետ երեք հարիւր էրիկ մարդ.
6 Եւ Ադինի որդիներէն՝ Յովնաթա-
նի որդին Աբեդ, ու անոր հետ յի-
7 սուն էրիկ մարդ. Ու Եղամի որ-
դիներէն՝ Գոթողիայի որդին Ե-
սայի, ու անոր հետ եօթանասուն
8 էրիկ մարդ. Եւ Սափատիայի որ-
դիներէն՝ Միքայէլի որդին Զա-
բադիա, ու անոր հետ ութսուն
9 էրիկ մարդ. Յովաբի որդիներէն՝
Յեքիէլի որդին Աբդիա, ու անոր
հետ երկու հարիւր տասնըութը
10 էրիկ մարդ. Եւ Սաղոմիթի որդի-
ներէն՝ Յոսեփիայի որդին, ու ա-
նոր հետ հարիւր վաթսուն էրիկ
11 մարդ. Եւ Բեբայիի որդիներէն՝
Բեբայիի որդին Զաքարիա, ու ա-
նոր հետ քսանըութը էրիկ մարդ.
12 Եւ Ազգադի որդիներէն՝ Ակատանի
որդին Յօհանան, ու անոր հետ հա-
13 րիւր տասը էրիկ մարդ. Եւ Ադօ-
նիկամի որդիներէն վերջինները՝ ո-
րոնց անունները ասոնք էին. Եղի-
փաղէտ, Յէիէլ ու Սեմայիա, և
անոնց հետ վաթսուն էրիկ մարդ.
14 Եւ Բագուէի որդիներէն՝ Ութայի,
ու Զաբուդ, ու անոնց հետ եօ-
թանասուն էրիկ մարդ:
15 Եւ ասոնք՝ Ահավա վազող գե-
տին եզերքը ժողվեցի, ու հոն երեք
օր իջևան ըրինք. և ժողովուրդը ու
քահանաները աչքէ անցուցի, ու
հոն [գ]Ղևտացւոց որդիներէն մարդ
16 մը չգտայ: Ան ատենը Եղիազար,
Արիէլ, Սեմայիա, Եղնաթան,
Յարիբ, Եղնաթան, Նաթան,
Զաքարիա ու Մեսուղամ իշխան-
ները, ու Յովարիբ ու Եղնաթան
17 իմաստունները կանչել տուի. Եւ
զանոնք՝ Քասիփիա ըսուած տեղը
եղող Ադդով իշխանին՝ պատուէր-
ներով ղրկեցի, ու Քասիփիա ը-
սուած տեղը եղող Ադդովին, ու
անոր եղբայրը՝ Նաթանայիմներուն
ղրուցուելու խօսքերը՝ [դ]անոնց բե-
րանը դրի, որ մեր Աստուծոյն տա-
նը համար մեզի պաշտօնեաներ բե-
18 րեն. Ու մեր Աստուծոյն բարի
ձեռքը մեր վրայ ըլլալուն համար,
Իսրայէլեան Ղևիին որդւոյն Մոո-
ղիին որդիներէն [ե]մէկ հանճարեղ
մարդ մը, այսինքն Սարաբիան ու
անոր որդիները ու եղբայրները՝
տասնըութը մարդ բերին մեզի.
19 Նաև Ասաբիան, ու անոր հետ Մե-
րարիի որդիներէն՝ Եսային ու ա-
նոր եղբայրները, ու անոնց որդի-
20 ները՝ քսան մարդ. [զ]Ու Նաթա-
նայիմներէն, որ Դաւիթ ու իշ-
խանները Ղևտացւոց ծառայու-
թեանը տուեր էին, ամէնը իրենց
անուններովը յիշուած՝ երկու հա-
րիւր քսան Նաթանայիմներ:
21 Եւ հոն Ահավայի գետին քովը՝
[է]ծոմապահութիւն քարոզեցի, որ
[ը]խոնարհինք մեր Տէր Աստուծոյն
առջևը, ու անկէ [թ]յաջող ճամ-
բորդութիւն խնդրենք՝ մեզի ու
մեր ընտանեացը և մեր բոլոր ըս-
22 տացուածքին համար. Վասն զի
ճամբուն մէջ մեզ թշնամիներէն
պաշտպանելու համար թագաւորէն
զօրք ու ձիաւորներ ուզելու [ժ]ա-
մըչցայ. որովհետև թագաւորին
ըսեր էինք թէ՝ [ի]Մեր Աստուծոյն
ձեռքը բոլոր զանիկայ փնտռողնե-
րուն վրայ է [լ]բարութեամբ, ու
անոր զօրութիւնը ու բարկութիւ-
նը [խ]ամէն անոնց վրայ՝ որ [ծ]զանի-
23 կայ կը թողուն: Ուստի ծոմ բռ-
նեցինք, ու աս բանիս համար՝ մեր
Աստուծմէն օգնութիւն խնդրեցինք.
ու անիկայ մեր [կ]խնդրուածքը ըն-
դունեց:
24 Եւ քահանայից իշխաններէն տա-
սուերկու մարդ զատեցի. այսինքն
Սարաբիան, ու Ասաբիան, ու ա-
նոնց հետ իրենց եղբայրներէն տասը
25 մարդ, Եւ [հ]արծաթը, ու ոսկին,
ու անօթները, նաև թագաւորին,
ու անոր խորհրդականներուն, ու
իշխաններուն, և հոն գտնուող բո-
լոր Իսրայէլին՝ մեր Աստուծոյն
տանը համար տուած ընծաները՝
26 կշիռքով անոնց յանձնեցի. Ու
վեց հարիւր յիսուն տաղանդ ար-
ծաթ, և հարիւր տաղանդ արծա-
թէ ամաններ, ու հարիւր տաղանդ
27 ոսկի, Եւ քսան ոսկի տաշտ հա-
զարական դրամէ, ու մաքուր ու
փայլուն և ոսկիի պէս սպատուական
պղնձէ երկու աման՝ կշիռքով ա-

ա Ա Մն. գ. 22.
բ Գլ. բ. 3.
գ Տես Գլ. է. 7.

Ն. ք. չք. իբր 457
դ Տես բ Թագ. ժդ. 3, 19.
ե Նեեմ. ը. 7, Թ. 4, 5.
զ Տես Գլ. բ. 43.
է բ Մն. ի. 3.
ը Ղև. ժզ. 29, իգ. 29, Ես. ծը. 3, 5.
թ Սաղ. ե. 8.
ժ Տես ա Կոր. Թ. 15.
ի Գլ. է. 6, 9, 28.
լ Սաղ. լգ. 18, 19, լդ. 15, 22, Հռով. ը. 28.
խ Սաղ. լդ. 16.
ծ բ Մն. ժե. 2.
կ ա Մն. ե. 20, բ Մն. լգ. 13, Ես. ժԹ. 22.
հ Գլ. է. 15, 16.

Ն. ք. գ. Ք. իւր 457

28 նոնց յանձնեցի, Ու անոնց ըսի. Դուք Տէրոջը նուիրուած էք, ու անօթներն ալ նուիրուած են. և արծաթը ու ոսկին՝ ձեր հարցը Տէր Աստուծոյն կամաւոր ընծայ մըն
29 է. Արթուն կացէք, ու պահեցէք, մինչև որ զանոնք Երուսաղէմ Տէրոջը տանը սենեակներուն մէջ՝ քահանայից՝ ու Ղեւտացւոց իշխաններուն, ու Իսրայէլի տոհմապետ-
30 ներուն առջևը կշռէք։ Եւ քահանաները ու Ղեւտացիները՝ արծաթը ու ոսկին ու ամանները՝ կշիռքով առին, որ Երուսաղէմ մեր Աստուծոյն տունը տանին։
31 Եւ առաջին ամսուն երկոտասաներորդ օրը՝ Ահավայի գետէն չուեցինք Երուսաղէմ երթալու համար, ու մեր Աստուծոյն ձեռքը մեր վրայ էր, ու մեզ ճամբան թշնամիին ու դարանակալին ձեռ-
32 քէն ազատեց. Ու Երուսաղէմ եկանք, և հոն իրեք օր նստանք։
33 Ու չորրորդ օրը՝ արծաթը, ու ոսկին, ու անօթները՝ մեր Աստուծոյն տանը մէջ՝ Ուրիա քահանային որդւոյն Մերամօթին ձեռքովը կշռուեցաւ, որուն հետ էր Փենէհեսի որդին Եղիազարը. ու անոնց հետ՝ Յեսուի որդին Յովզաբադ, ու Բանուիի որդին Նովա-
34 դիա Ղեւտացիները կային։ Ամէնը թուով ու կշիռքով յանձնուեցաւ. ու ան ատենը բոլոր կշիռքը գրուեցաւ։
35 Գերութեան որդիքը՝ որոնք գերութենէ դարձած էին, Իսրայէլի Աստուծոյն ողջակէզներ մատուցին. բոլոր Իսրայէլին համար տասուերկու զուարակ, իննսունուվեց խոյ, եօթանասունուեօթը գառն, ու մեղքի պատարագի համար՝ տասուերկու նոխազ. ասոնց ամէնը
36 Տէրոջը ողջակէզ մատուցին։ Եւ անոնք թագաւորին հրովարտակը՝ Գետին ասդիի կողմը եղող՝ թագաւորին փոխանորդներուն ու իշխաններուն տուին. անոնք ալ՝ ժողովուրդին ու Աստուծոյ տանը ձեռնտու եղան։

Margin references: Ղև. իա. 6, 7, 8; բ Օր. լգ. 8; Ղև. իբ. 2, 3; Թուոց. դ. 4, 15, 19, 20; Գլ. է. 6, 9, 28; Նեեմ. բ. 11; Հմր 26, 30; Գլ. գ. 17; Գլ. է. 21.

## ԳԼ. Թ

1 Ժողովուրդը օտար ազգաց հետ խնամութիւն ընելուն համար՝ Եզրաս սուգ կ'ընէ. 5 ու գործուած մեղքերը խոստովանելով՝ Աստուծոյ աղօթք կ'ընէ։

457

1 Ու երբոր աս բաները կատարուեցան, իշխանները ինծի մօտեցան, ու ըսին. Իսրայէլի ժողովուրդը, ու քահանաները, ու Ղեւտացիները՝ այս երկիրներուն ժողովուրդներէն չզատուեցան, Քանանացւոց, Քետացւոց, Փերեզացւոց, Յեբուսացւոց, Ամմոնացւոց, Մովաբացւոց, Եգիպտացւոց ու Ամօրհացւոց պղծու-
2 թիւններուն պէս կ'ընէին. Վասն զի իրենց համար ու իրենց որդւոցը համար՝ անոնց աղջիկներէն կնիկներ առին. և սուրբ սերունդը այս երկիրներուն ժողովրդոցը հետ խառնուեցաւ. ու իշխանները ու ոստիկանները աս մեղքը գործելու
3 մէջ առաջինները եղան։ Եւ աս բանը լսածիս պէս՝ հանդերձս ու վերարկուս պատռեցի, և գլխուս ու մօրուքիս մազերը փետտեցի,
4 ու ապշած նստայ։ Ան ատենը գերութենէ դարձողներուն յանցանքին պատճառաւը՝ Իսրայէլի Աստուծոյն խօսքերէն բոլոր վախցողները իմ քովս ժողվուեցան. ու ես մինչև իրիկուան զոհին ատենը ապշած նստայ։
5 Եւ իրիկուան զոհին ատենը տառապանքէս ելայ, ու պատռած հանդերձներովս ու վերարկուովս՝ ծնկան վրայ եկայ, ու ձեռքերս իմ Տէր Աստուծոյս առջևը
6 տարածեցի, Ու ըսի. Ո՛վ Աստուած իմ՝ կ'ամչնամ, ու իմ երեսս քեզի վերցընելու չեմ համարձակիր, ո՛վ Աստուած իմ. վասն զի մեր անօրէնութիւնները մեր գլխէն վեր բարձրացան, ու մեր յանցանքը մինչև երկինքը ելաւ։
7 Մեր հայրերուն օրերէն 'ի վեր՝ մենք մեծ յանցանքի մէջ ենք մինչև աս օրս. ու մեր անօրէնութիւններուն համար՝ մենք ու մեր թագաւորները և մեր քահանաները՝ երկիրներու թագաւորներուն ձեռքը՝ սուրի, գերութեան, յափշտակութեան ու երեսի ամօթեան տրուեցանք, ինչպէս որ այսօր կ'երև-
8 նայ։ Եւ հիմա քիչ մը ատեն մեր Տէր Աստուծմէն ողորմութիւն եղաւ, որ մեզի փրկութիւն շնորհէ, ու իր սրբութեանը տեղին մէջ *մեզ հաստատէ", որ մեր Աստուածը մեր աչքերը լուսաւորէ, ու մեր ծառայութեանը մէջ մեզի քիչ մը
9 հանգստութիւն տայ։ Վասն զի մենք ծառայ էինք, բայց մեր Աստուածը մեզ երբեք չձգեց մեր ծառայութեանը մէջ. հապա մեզի հանգստութիւն տալու, ու մեր Աստուծոյն տունը կանգնելու, և անոր աւերակները նորոգելու, ու մեզի Յուդայի մէջ ու Երուսաղէմի մէջ պարսպապատ տեղ մը տալու համար, Պարսից թագաւորներուն առջևը մեզի շնորհք գտնել տուաւ։
10 Եւ հիմա ո՛վ Աստուած մեր՝ ասկէ ետքը ի՞նչ ըսենք. քանզի քու պատուիրանքներդ թողուցինք,
11 Որ

Margin references: Ն. ք. գ. Ք. 427; Եզ. լդ. 16; բ Օր. է. 3; Նեեմ. ժգ. 23; Եզ. ժթ. 6; իբ. 31; բ Օր. է. 6; ժդ. 2; բ Կոր. զ. 14; Յոբ. ա. 20; Սաղ. ճխգ. 4; Գլ. ժ. 3; Ես. կզ. 2; Եզ. իթ. 39; Եզ. թ. 29, 33; Դան. թ. 7, 8; Սաղ. լը. 4; բ Մն. իը. 9; Յայտ. ժը. 5; Սաղ. ճզ. 6; Դան. թ. 5, 6, 8; բ Օր. իը. 36, 64; Նեեմ. թ. 30; Դան. թ. 7, 8; * Եբր. մեզի բևեռ մը տայ. Ես. իբ. 23; Սաղ. ժզ. 3; Լդ. 5; Նեեմ. թ. 36; Սաղ. ճլզ. 23; Ես. ե. 2; Գլ. է. 28.

Ն.Ք.ԳՔ. 457
Գլ. զ. 21
Դ Թագ. իա. 16
Ել. իգ. 32. Լգ. 16. Բ Օր. է. 3
Բ Օր. իգ. 6
Առակ. ժգ. 22. ի. 7
Սաղ. ճգ. 10
Յոհ. ե. 14. Բ Պետ. բ. 20. 21
Հմր 2. Նեեմ. ժգ. 23, 27
Բ Օր. թ. 8
Նեեմ. թ. 33. Դան. թ. 14
Ա Կոր. ժե. 17
Յհով. գ. 19
Սաղ. ճլ. 3

քու ծառաներուդ մարգարէներուն
ձեռքովը պատուիրեցիր՝ ըսելով .
Ան երկիրը՝ որ պիտի մտնէք զանի-
կայ ժառանգելու համար , գարշելի
երկիր մըն է , երկիրներու ազգե-
րուն գարշելի պղծութիւններովը
[illegible] . որովհետեւ զանիկայ ծայրէ
'ի ծայր իրենց անմաքրութեամբը
12 լեցուցեր են ։ Ուրեմն ձեր աղ-
ջիկները անոնց որդւոցը չտաք , ու
անոնց աղջիկները ձեր որդւոցը հա-
մար չառնէք , և յաւիտեան ա-
նոնց խաղաղութիւնը ու երջան-
կութիւնը չփնտռէք , որպէս զի
ուժովնաք , ու ան երկրին բարիքը
ուտէք , ու զանիկայ ձեր որդւոցը
յաւիտենական ժառանգութիւն
13 թողուք ։ Ու մեր չար գործքերուն
համար , ու մեր մեծ յանցանքին
համար՝ այս բոլոր բաները մեր վրայ
գալէն ետքը ( թէպէտեւ դուն ով
Աստուած մեր՝ մեղաց չպատժեցիր
մեր մեղացը չափ , հապա մեզի այս-
14 պէս փրկութիւն տուիր , ) պէ՞տք
էր որ նորէն քու պատուիրանք-
ներդ զանց ընէինք , և աս գարշե-
լի ազգերուն հետ խնամութիւն ը-
նէինք . միթէ դուն մեզի պիտի
չսրդողէի՞ր , ու մեզ պիտի չսպա-
ռէի՞ր , մինչև որ մեզ մնացորդ ու
15 ազատուած մը չմնար ։ Ո՛վ Տէր
Աստուած Իսրայէլի , դուն արդար
ես . վասն զի մենք մինչև աս օրս
ողջ մնացինք . ահա մենք մեր յան-
ցանքովը քու առջևդ ենք . թէ-
պէտեւ աս պատճառաւ քու առ-
ջևդ չենք կրնար կայնիլ ։

## ԳԼ . Ժ

1 Սեքենիա կը յորդորէ Եզրասը՝ որ օտար ազգաց հետ եղած ամուսնութիւնները խափանէ ։ 6 Եզրաս սուգ բռնելով՝ ժողովուրդը կը ժողվէ ։ 9 Ժողովուրդը՝ Եզրասին յորդորանօքը կը զղջան , ու կը խոստանան որ այնուհետեւ ան մեղքէն հրաժարին ։ 15 Աս բանը գլուխ կը տարուի ։ 18 Օտարազգի կնիկներ ունեցողներուն անունները ։

Բ Մն. ի. 9
Դան. թ. 20
Նեեմ. ժգ. 27
Բ Մն. լդ. 31

1 Ու երբոր Եզրաս՝ լալով ու Աս-
տուծոյ տանը առջևը գետինը
ինկած՝ այս աղօթքը ու խոստո-
վանութիւնը կ՚ընէր , Իսրայէլէն
խիստ շատ բազմութիւն՝ էրիկ ու
կնիկ մարդիկ , ու տղաքներ՝ անոր
քովը ժողվուեցան . և ժողովուրդը
2 խիստ շատ լացաւ ։ Ու Եղամի որ-
դիներէն՝ Յեքիէլի որդին Սեքենիան՝
Եզրասին պատասխան տուաւ ու ը-
սաւ . Մենք մեր Աստուծոյն դէմ
մեղք գործեցինք , ու երկրին ժո-
ղովուրդներէն օտար կնիկներ ա-
ռինք . բայց հիմա աս բանիս մէջն
3 ալ Իսրայէլի համար յոյս կայ ։ Ու
հիմա մեր Աստուծոյն առջևը
ուխտ ընենք , որ բոլոր կնիկները ու
անոնցմէ ծնածները՝ իմ տիրոջս ,
ու մեր Աստուծոյն հրամանէն
դողացողներուն խրատովը հանենք ,
և այս գործը օրէնքին համեմատ թող
4 ըլլայ ։ Ելի՛ր , վասն զի աս գործը
քեզի կ՚իյնայ . մենք ալ քեզի հետ
կ՚ըլլանք . զօրացիր ու ըրէ ։
5 Ու Եզրաս ելաւ , և քահանայից
իշխաններուն , Ղեւտացիներուն ,
ու բոլոր Իսրայէլին երդում ընել
տուաւ որ աս խօսքիս պէս ընեն .
6 և անոնք երդում ըրին ։ Ու Եզ-
րաս՝ Աստուծոյ տանը առջևէն ե-
լաւ , ու Եղիասիբի որդւոյն Յօ-
հանանին սենեակը գնաց . և հոն
մտնելով՝ հաց չկերաւ , ու ջուր
չխմեց . վասն զի գերութենէ ե-
լածներուն յանցանքին համար
7 սուգ կը բռնէր ։ Ու Յուդայի ու
Երուսաղէմի մէջ մունետիկ կանչել
տուին , որ բոլոր գերութենէ ե-
լածները Երուսաղէմ ժողվուին .
8 Ու մինչև իրեք օր ով որ չգար՝ իշ-
խաններուն ու ծերերուն հրամա-
նին համեմատ , անոր բոլոր ստա-
ցուածքը *նզովուած պիտի ըլլար ,
ու ինքը գերութենէ դարձողնե-
րուն ժողովքէն պիտի զատուէր ։
9 Ու Յուդայի ու Բենիամինի բոլոր
մարդիկները ան իրեք օրուանը
մէջ՝ այսինքն իններորդ ամսուն
քսաներորդ օրը՝ Երուսաղէմի մէջ
ժողվուեցան . և բոլոր ժողովուր-
դը այս գործիս համար՝ ու սաստիկ
անձրևներուն համար՝ դողալով
նստան Աստուծոյ տանը հրապա-
10 րակին մէջ ։ Ու Եզրաս քահա-
նան ելաւ , ու անոնց ըսաւ . Դուք
մեղք գործեցիք , և օտար կնիկներ
առնելով՝ Իսրայէլին յանցանքը
11 աւելցուցիք ։ Ու հիմա ձեր հայ-
րերուն Տէր Աստուծոյն առջևը
ձեր մեղքը խոստովանեցէք , և անոր
հաճոյ եղածը ըրէք , ու երկրիս
ժողովուրդներէն ու օտար կնիկնե-
րէն զատուեցէք ։
12 Ան ատենը բոլոր ժողովքը պա-
տասխան տուին , ու բարձր ձայ-
նով ըսին . †Մեր պարտքն" է որ
անանկ՝ քու ըսածիդ պէս ընենք .
13 Բայց ժողովուրդը շատուոր՝ ու ժա-
մանակը անձրևոտ է , ու դուրս
տեղ չենք կրնար կայնիլ . և ասի-
կայ մէկ օրուան կամ երկու օրուան
գործ չէ . քանզի շատերնիս աս
14 բանիս մէջ յանցաւոր ենք ։ Հի-
մա մեր իշխանները բոլոր ժողով-
քին համար կայնին , ու մեր քա-
ղաքներուն մէջը բոլոր օտար կնիկ
առնողները որոշուած ժամանակ-
ներու մէջ գան . և ամէն մէկ քա-
ղաքին ծերերը ու դատաւորները
անոնց հետը ըլլան , մինչև որ աս

Ն.Ք.ԳՔ. 457
Բ Օր. է. 2. 3
Գլ. թ. 4
Ա Մն. իը. 10
Նեեմ. ե. 12
Բ Օր. թ. 18
*Կամ՝ գրաւեալ
Ա Թագ. ժբ. 18
Յես. է. 19. Առակ. իը. 13
Հմր 8
†Եբր. Մեր վրայ

Ն. Բ. ԴԲ. 457

ԽՐՄ. Լ. Տ.

* Կամ՝ Միայն

բանիս համար Իմեր Աստուծոյն
սաստիկ բարկութիւնը մեզմէ դառ-
նայ ։
15 *Բայց Ասայէլի որդին Յովնա-
թանը, ու Թեկուայի որդին Յա-
զիան աս գործիս վրայ կայնեցան,
ու Մեսուղամը, ու Ղևտացի Սա-
բեթան անոնց օգնութիւն ըրին ։
16 Եւ գերութենէ ելածները այնպէս
ըրին. ու Եզրաս քահանան, ու
քանի մը տոհմապետներ իրենց
տոհմերուն համեմատ՝ (ամէնն ալ
իրենց անուններովը) ընտրուեցան.
ու տասներորդ ամսուն առաջին օ-
17 րը՝ աս գործը քննելու նստան. Եւ
բոլոր օտար կնիկ առնող մարդիկ-
ներուն գործը առաջին ամսուն ա-
ռաջին օրը լմնցուցին ։

456

18 Ու քահանայից որդիներէն օտար
կնիկ առնողներ ասոնք գտնուեցան.
Յովսեդեկեան Յեսուին որդիներէն
ու եղբայրներէն՝ Մաասիա, Եղիա-
19 զար, Յարիբ ու Գոդողիա. Եւ
իրենց կնիկները արձակելու † խօսք
տուին. ու ծյանցաւոր ըլլալով՝
իրենց յանցանքին համար հօտերէն
20 մէյմէկ խոյ տուին ։ Ու Եմմերի
որդիներէն՝ Անանի ու Զաբադիա.
21 Ու Հարիմի որդիներէն՝ Մաասիա,
Եղիա, Սեմայիա, Յեքիէլ ու Ո-
22 զիա. Եւ Փասուրի որդիներէն՝ Ե-
ղիովէնայի, Մաասիա, Իսմայէլ,
Նաթանայէլ, Յովզաբադ ու Ե-
23 ղեասա. Ու Ղևտացիներէն՝ Յով-
զաբադ, Սեմէի, Կովղիա, այս-
ինքն Կովղիտա, Փեթայիա, Յու-
24 դա ու Եղիազար. Ու երգեցողնե-
րէն՝ Եղիասիբ. ու դռնապաններէն՝
25 Սեղղում, Տելեմ և Ուրի. Ու Իս-
րայէլէն՝ Փարոսի որդիներէն՝ Ռա-
միա, Յեզիա, Մեղքիա, Միա-
մին, Եղիազար, Մեղքիա ու Բա-
26 նեա. Ու Եղամի որդիներէն՝ Մա-
թանիա, Զաքարիա, Յեքիէլ,
27 Աբդի, Յերիմովթ ու Եղիա. Եւ
Զաթուի որդիներէն՝ Եղիովէնայի,
Եղիասիբ, Մաթանիա, Յերի-
28 մովթ, Զաբադ ու Ազիզա. Եւ
Բեբայիի որդիներէն՝ Յօհանան,
Անանիա, Զաբբայ ու Աթաղի.
29 Եւ Բանիի որդիներէն՝ Մեսուղամ,
Մալուք, Ադայիա, Յասուբ, Սա-
30 աղ ու Ռամովթ. Եւ Փաաթ Մո-
վաբի որդիներէն՝ Եդնա, Քաղէլ,
Բանեա, Մաասիա, Մաթանիա,
Բեսելիէլ, Բանուի ու Մանասէ.
31 Ու Հարիմի որդիներէն՝ Եղիազար,
Յեսիա, Մեղքիա, Սեմայիա,
32 Շմաւոն, Բենիամին, Մալուք ու
33 Սամարիա. Հասումի որդիներէն՝
Մաթանայ, Մատաթա, Զաբադ,
Եղիփաղէտ, Յերեմի, Մանասէ
34 ու Սեմէի. Բանիի որդիներէն՝
35 Մաադայ, Ամրամ, Ուէլ, Բա-
36 նեա, Բադայիա, Քեղուհայ, Ուա-
37 նիա, Մերամովթ, Եղիասիբ, Մա-
թանիա, Մաթանայ, Յաասու,
38 Բանի, Բանուի, Սեմէի, (39) Սե-
40 ղեմիա, Նաթան, Ադայիա, Մաք-
41 նադբայ, Սասայ, Սարայ, Ազա-
42 րիէլ, Սեղեմիա, Սամարիա, Սեղ-
43 ղում, Ամարիա ու Յովսէփ. Նա-
բաւի որդիներէն՝ Յէիէլ, Մատա-
թիա, Զաբադ, Զեբինա, Յա-
44 դայի, Յովէլ ու Բանեա ։ Ասոնք
ամէնը օտար կնիկներ առեր էին.
ու անոնցմէ ոմանք՝ զաւակ բերած
կնիկներ ունէին ։

† Նոյն. ձեռքերնին. Ծղն. Գ. 4, 6

Ն. Բ. ԴԲ. 456

# ԳԻՐՔ ՆԷԵՄԻԱՅ

## ԳԼՈՒԽ Ա

1 Նէեմիա՝ Անանիէն լսելով Երուսաղէմի դժբաղդութիւնը, սուգ կ'ընէ, ծոմ կը պահէ, ու կ'աղօթէ։ 5 Անոր աղօթքը։

1 Աքաղիայի որդւոյն ᵃՆէեմիային
խօսքերը։
Ու եղաւ որ՝ Քասղև ամսուն մէջ՝
Արտաշէս ·Թագաւորին քսաներորդ
տարին՝ երբոր ես Շուշան մայրա-
2 քաղաքն էի, Անանի ·անուանով եղ-
բայրներէս մէկը, ու քանի մը Յու-
դայի մարդիկներ ինծի եկան. և
անոնց՝ գերութենէ ազատուած ու
մնացած Հրէաներուն վրայով՝ ու
Երուսաղէմին վրայով հարցուցի։
3 Եւ ինծի ըսին. Գերութենէ ա-
զատուած՝ մնացածները՝ հոն գա-
ւառին մէջը՝ մեծ նեղութեան ու
անարգութեան մէջ են, ու ᵇԵրու-
սաղէմին պարիսպը ᶜփլած, և անոր
դռները կրակով այրուած են։
4 Ու երբոր ես աս խօսքերը լսեցի,
նստայ լացի. ու քանի մը օր սուգ
բռնեցի, և ծոմ պահելով՝ երկնից
Աստուծոյն առջևը աղօթք ըրի,
5 Ու ըսի. Ո՛հ, ᵈՏէր Աստուած
երկնից, որ մեծ ու ահեղ Աս-
տուած ես, ᵉու քեզ սիրողներուն
և քու պատուիրանքներդ պահող-
ներուն՝ ուխտ ու ողորմութիւն կը
6 պահես. Կ'աղաչեմ, քու ականջ-
ներդ թող մտիկ ընեն, ու ᶠաչ-
քերդ բաց ըլլան, որ լսես քու ծա-
ռայիդ աղօթքը, որն որ քու ծա-
ռաներուդ Իսրայէլի որդւոցը հա-
մար հիմա ցորեկ ու գիշեր քեզի
կը մատուցանեմ, ᵍխոստովանե-
լով Իսրայէլի որդւոցը մեղքը, ո-
րով քեզի դէմ մեղանչեցինք.
քանզի թէ ես՝ և թէ իմ հօրս
7 տունը մեղք գործեցինք։ Յիրաւի
ʰմենք քու առջևդ անօրէնու-
թիւններ ըրինք, ու քու ծառայիդ
Մովսէսին տուած ⁱպատուիրանք-
ներդ, կանոններդ ու դատաստան-
8 ներդ չպահեցինք։ Աղէկ կ'աղա-
չեմ՝ յիշէ ան խօսքը, որ քու ծա-
ռայիդ Մովսէսին պատուիրեցիր,
ըսելով. ʲԹէ որ յանցանք ընէք,
ես ձեզ ազգերու մէջ պիտի ցը-
9 րուեմ. ᵏԻսկ թէ որ ինծի դառ-
նաք, ու իմ պատուիրանքներս պա-

Ն. ք. զճ.
446
ᵃ Գլ. ժ. 1։
ᵇ Գլ. բ. 17։
ᶜ Դ Թագ. իե. 10։
ᵈ Դան. թ. 4։
ᵉ Ել. ի. 6։
ᶠ Գ Թագ. ը. 28, 29։ Բ Մն. զ. 40։ Դան. թ. 17, 18։
ᵍ Դան. թ. 20։
ʰ Սաղ. ճզ. 6։ Դան. թ. 5։
ⁱ Բ Օր. իը. 15։
ʲ Ղև. իզ. 33։ Բ Օր. դ. 25, 26, 27։ իը. 64։
ᵏ Ղև. իզ. 40. ա։ Բ Օր. դ. 29, 30, 31։ լ. 2։

հէք, ու զանոնք կատարէք, ˡձեզ-
մէ ցրուածները թէև *երկրիս ծայ-
րը ըլլան, զանոնք անկէ պիտի ժող-
վեմ, ու ան տեղը պիտի տանիմ՝
որն որ ընտրեցի իմ անունս հոն
10 դնելու համար։ ᵐԵւ հիմա անոնք՝
քու մեծ ուժովդ ու զօրաւոր ձեռ-
քովդ ազատած ծառաներդ ու ժո-
11 ղովուրդդ են։ Ո՛հ Տէր, հիմա
քու ծառայիդ աղօթքը, ու ⁿքու
անունէդ վախնալու փափաք ունե-
ցող ծառաներուդ աղօթքը ᵒքու
ականջդ թող լսէ. և այսօր քու
ծառայիդ յաջողութիւն տուր, ու
աս մարդուն առջևը ինծի շնորհք
գտնել տուր։ Վասն զի ես թա-
գաւորին ᵖմատռուակն էի։

Ն. ք. զճ.
446
ˡ Բ Օր. լ. 4։
* Եբր. երկնից
ᵐ Բ Օր. թ. 29։ Դան. թ. 15։
ⁿ Ես. իզ. 8։ Եբր. ժգ. 18։
ᵒ Հմր 6։
ᵖ Գլ. բ. 1։

## ԳԼ. Բ

1 Արտաշէս՝ Նէեմիային տրտմութեանը պատճառը կ'իմանայ, ու նամակներ ու պատուէրներ տալով՝ զանիկայ Երուսաղէմ կը խրկէ։ 9 Նէեմիա՝ Երուսաղէմ կու գայ. իսկ Հրէից թշնամիները անոր գալուն վրայ կը տրտմին։ 12 Անիկայ գաղտուկ կ'երթայ՝ պարսպին փրլած տեղուանքը տեսնելու. 17 Նէեմիա կը յորդորէ Հրէաները որ պարսպին շինութիւնը սկսին, թշնամեաց խօսքերուն ականջ չդնելով։

1 Ու եղաւ որ Նիսան ամսուն մէջը՝
ᵃԱրտաշէս թագաւորին քսա-
ներորդ տարին՝ անոր առջևը գինի
կար, և ᵇգինին առի, ու թագա-
ւորին տուի. ու անոր առջևը բնա-
2 տրտում երբեք չէի երևցած։ Եւ
թագաւորը ինծի ըսաւ. Ինչո՞ւ
երեսդ տրտում է, որովհետև հի-
ւանդ չես. ատիկայ ուրիշ բան չէ,
բայց եթէ ᶜսրտի տրտմութիւն.
3 ու ես խիստ շատ վախցայ։ Ան
ատենը թագաւորին ըսի. ᵈԹա-
գաւորը յաւիտեան ողջ կենայ.
ի՞նչպէս իմ երեսս տրտում չըլլայ,
որ իմ հարցս գերեզմաններուն տե-
ղը եղող ᵉքաղաքը աւերակ՝ ու
անոր դռները կրակով այրած են։
4 Եւ թագաւորը ինծի ըսաւ. Դուն
ինծմէ ի՞նչ կը խնդրես աս բանիս
վրայով։ Ան ատենը երկնից Աս-
5 տուծոյն աղօթք ըրի. Ու թագա-
ւորին ըսի. Թէ որ թագաւորին
հաճոյ կ'երևնայ, ու թէ որ քու
ծառադ քու առջևդ շնորհք գը-
տաւ, զիս Հրէաստան խրկես իմ

ԽԸՐ 445
ᵃ Եզր. է. 1։
ᵇ Գլ. ա. 11։
ᶜ Առակ. ժե. 13։
ᵈ Գ Թագ. ա. 31։ Դան. բ. 4։ ե. 10։ զ. 6, 21։
ᵉ Գլ. ա. 3։

Ն․ Ք․ ԳՖ․ Իրր 445

հարցս դերեզմաններուն քաղաքը ,
6 որ զանիկայ շինեմ ։ Եւ Թագա֊
ւորը ինծի ըսաւ . (ու Թագուհին
անոր քովը նստեր էր .) Քու ճամ֊
բորդութիւնդ մրչափ ատեն պիտի
քշէ , ու ե՞րբ պիտի դառնաս . և
Թագաւորին հաճոյ երևցաւ որ զիս
ղրկէ . ես ալ անոր ᵃժամանակ
7 որոշեցի ։ Ու Թագաւորին ըսի .
Թէ որ Թագաւորին հաճոյ կ'երև֊
նայ , ինծի նամակներ տրուի Գետին
միւս կողմը եղող իշխաններուն ,
որ զիս անցընեն , մինչև որ Հրէաս֊
8 տան երթամ , Ու մէկ նամակ մը Ա֊
սափին՝ որ Թագաւորական *պար֊
տէզին պահապանն է , որպէս զի
ինծի փայտ տայ , ᵇԱստուծոյ տանը
աշտարակին դռները , և քաղաքին
պարիսպը , ու մտնելու ᶜտունս
շինելու համար ։ Եւ Թագաւորը
ᵈզանոնք ինծի տուաւ . վասն զի ᵉիմ
Աստուծոյս բարի ձեռքը իմ վրաս
էր ։

ᵃԴԳլ․ Ե․ 14։ ԺԳ․ 6։
* Կամ՝ ան֊տառին
ᵇ Գլ․ Գ․ 7։
ᵉԵզր․ Է․ 5։ Է․ 6․ 9․ 28։ Հմր 18։

445

9 Ու Գետին միւս կողմը եղող
իշխաններուն գացի , ու Թագաւո֊
րին նամակները անոնց տուի . և
Թագաւորը իմ հետս զօրապետներ
10 ու ձիաւորներ ղրկեց ։ Ու երբոր
Սանաբաղատ Որոնացին՝ ու Ամմո֊
նացի ծառան Տուբիան լսեցին ,
շատ նեղացան , որ Իսրայէլի որդւո֊
ցը աղէկութիւնը փնտռելու հա֊
11 մար մարդ մը եկաւ ։ Ու ᶠԵրուսա֊
ղէմ եկայ , և հոն իրեք օր մնացի ։
12 Ու ես քանի մը մարդոց հետ՝
գիշերով ելայ . ու ինչ որ իմ Աս֊
տուածս սրտիս մէջը դրեր էր Ե֊
րուսաղէմին համար ընելու , զանի֊
կայ մարդու մը չըսեցի , և ինծի
հետ՝ իմ հեծած անասունէս 'ի
զատ՝ ուրիշ անասուն մը չկար ։
13 Եւ գիշերով ᵍՁորի դռնէն՝ Վի֊
շապի աղբիւրին առջևէն Աղբից
դուռը ելայ , ու Երուսաղէմին ʰփը֊
լած պարիսպները ու կրակէն այ֊
14 րած դռները զննեցի ։ Եւ ⁱԱղբիւ֊
րի դուռը ու Թագաւորին աւազա֊
նը անցայ , ու տակս եղող անա֊
15 սունին անցնելու տեղ չկար ։ Եւ
գիշերով ʲՀեղեղատէն վեր ելայ՝ ու
պարիսպը զննեցի . ու դարձայ Ձո֊
րի դռնէն մտայ , ու այսպէս նորէն
16 ետ դարձայ . Եւ ոստիկանները
իմ ուր երթալս ու ինչ ընելս չի֊
մացան . ու Հրէաներուն , կամ քա֊
հանաներուն , կամ ազնուականնե֊
րուն , կամ ոստիկաններուն , և
կամ ուրիշներուն՝ որոնք գործը
կ'ընէին , մինչև հիմա չըսեցի ։
17 Ետքը անոնց ըսի . Դուք կը տես֊
նէք աս թշուառութիւնը՝ որուն
մէջը կը գտնուինք , և թէ ինչպէս
Երուսաղէմը աւերակ , ու անոր

ᶠ Եզր․ Ը․ 32։
ᵍ Բ Մն․ ԻԶ․ 9։ Գլ․ Գ․ 13։
ʰ Գլ․ Ա․ 3։ Հմր 17։
ⁱ Գլ․ Գ․ 15։
ʲ Բ Թագ․ ԺԵ․ 23։ Երեմ․ ԼԱ․ 40։

դռները կրակով այրուած են .
եկէք Երուսաղէմին պարիսպը շի֊
նենք , որ այսուհետև ᵏնախա֊
18 տինք չըլլանք ։ Եւ ˡիմ Աստու֊
ծոյս բարի ձեռքը իմ վրաս ըլլալը ,
ու Թագաւորին ինծի ըսած խօս֊
քերն ալ անոնց պատմեցի . ու
անոնք ըսին . Ելլենք շինենք . և
ᵐիրենց ձեռքերը ուժովցուցին աս
բարի գործին համար ։
19 Բայց Որոնացի Սանաբաղատը ,
ու Ամմոնացի ծառան Տուբիան , և
Արաբացի Գեսամը լսելով՝ ⁿմեզ
ծաղր ըրին , ու մեզ քամահրելով՝
ըսին . Աս ձեր ըրած գործը ի՞նչ
պիտի ըլլայ . ᵒմիթէ դուք Թա֊
գաւորէն ապստամբի՞լ կ'ուզէք ։
20 Եւ անոնց պատասխան տուի , ու
ըսի . Երկնից Աստուածը՝ ինքը մե֊
զի յաջողութիւն պիտի տայ , ու
մենք՝ որ անոր ծառաներն ենք ,
պիտի ելլենք ու շինենք , ᵖբայց
դուք Երուսաղէմի մէջ բաժին ,
իրաւունք ու յիշատակ չունիք ։

Ն․ Ք․ ԳՖ․ Իրր 446
ᵏ Գլ․ Ա․ 3։ Սաղ․ ԽԹ․ 13։ Ծթ․ 4։ Երեմ․ ԻԴ․ 9։ Եզեկ․ Ե․ 14, 15։ ԻԲ․ 4։
ˡ Հմր 8։
ᵐ Բ Թագ․ Բ․ 7։
ⁿ Սաղ․ ԽԴ․ 13։ Ծթ․ 4։ Դ․ 6։
ᵒ Գլ․ Զ․ 6։
ᵖ Եզր․ Դ․ 3։

## ԳԼ․ Գ

1-32 Պարիսպը շինող մարդոց անունները ու անոնց կարգը ։

1 Ու մեծ քահանան ᵃԵղիասիբ , և
անոր քահանայ եղբայրները ե֊
լան , ᵇու Ոչխարաց դուռը շինեցին .
անոնք զանիկայ նուիրեցին , և ա֊
նոր փեղկերը կանգնեցին . ու զա֊
նիկայ ᶜմինչև Մէայի աշտարակը ,
մինչև ᵈԱնանայէլի աշտարակը նուի֊
2 րեցին ։ Եւ անոր քովը՝ ᵉԵրիքովի
մարդիկը շինեցին . ու անոնց քովը՝
3 Իմրիի որդին Զաքուրը շինեց ։ ᶠԵւ
Ձկանց դուռը՝ Սենաայի որդիքը
շինեցին . անոնք զանիկայ շինեցին ,
ու ᵍանոր փեղկերը , փականքը ու
4 նիգերը անցուցին ։ Եւ անոնց քո֊
վը՝ Ակկուսի որդւոյն Ուրիային որ֊
դին Մերամոթը նորոգեց . ու ա֊
նոնց քովը՝ Մասիզեբէլի որդւոյն
Բարաքիային որդին Մեսուղամը
նորոգեց . և անոնց քովը՝ Բաանայի
5 որդին Սադովկը նորոգեց ։ Ու ա֊
նոնց քովը՝ Թեկուացիք նորոգե֊
ցին . բայց անոնց մեծերը ʰիրենց
Տէրոջը գործքին իրենց վիզը չծռե֊
6 ցին ։ Եւ ⁱՀին դուռը՝ Փասէի
որդին Յովիադան ու Բասոդիայի
որդին Մեսուղամը նորոգեցին .
անոնք զանիկայ շինեցին , ու անոր
փեղկերը , փականքը ու նիգերը
7 անցուցին ։ Եւ անոնց քովը՝ Գա֊
բաւոնացի Մելատիան , ու Մերո֊
նոթացի Յադոնը , և Գաբաւոնի
ու Մասփայի մարդիկները շինեցին ,
մինչև Գետին աս կողմը եղող իշ֊
8 խանին ʲաթոռը ։ Անոր քովը՝
ոսկերիչներէն Հարհայայի որդին

ᵃ Գլ․ ԺԲ․ 10։
ᵇ Յովհ․ Ե․ 2։
ᶜ Գլ․ ԺԲ․ 39։
ᵈ Երեմ․ ԼԱ․ 38։ Զաք․ ԺԴ․ 10։
ᵉ Եզր․ Բ․ 34։
ᶠ Բ Մն․ ԼԳ․ 14։ Գլ․ ԺԲ․ 39։ Սոփ․ Ա․ 10։
ᵍ Տես Գլ․ Զ․ 1։ Է․ 1։
ʰ Դատ․ Ե․ 23։
ⁱ Գլ․ ԺԲ․ 39։
ʲ Գլ․ Բ․ 8։

Ն. Ք. ԴՃ.
445

Ոզիէլը նորոգեց. ու անոր քովը՝
դեղագործներուն որդին Անանիան
նորոգեց. ու Երուսաղէմը՝ մինչև
9 Էլայն պարիսպը թողուցին։ Եւ
անոնց քովը՝ Երուսաղէմի կէս մա-
սին իշխանը՝ Ովրի որդին Հռափա-
10 յիան նորոգեց։ Եւ անոնց քովը՝
ու իր տանը դիմացը՝ Հարումափի
որդին Յեդայիան նորոգեց. ու
անոր քովը՝ Ասաբանիայի որդին
11 Քետտուսը նորոգեց։ Միւս բաժի-
նը, և ու փուռերու աշտարակը՝
Հարիմի որդին Մեղքիան, ու
Փաաթ Մովաբի որդին Ասուբը նո-
12 րոգեցին։ Եւ անոր քովը՝ Երու-
սաղէմի կէս մասին իշխանը՝ Ալօեսի
որդին Սեղղումը՝ ինքը ու իր աղ-
13 ջիկները նորոգեցին. ե Ձորի դու-
ռը՝ Անոնը, ու Զանովի բնակիչ-
ները նորոգեցին. անոնք զանիկայ
շինեցին, ու անոր փեղկերը, փա-
կանքը ու նիգերը անցուցին. ու
պարիսպէն հազար կանգուն շինեցին՝
14 մինչև ծ Աղբից դուռը։ Եւ Աղբից
դուռը՝ Բեթաքարմայի կողմանց
իշխանը՝ Ռեքաբի որդին Մեղքիան
նորոգեց. զանիկայ ան շինեց, ու
անոր փեղկերը, փականքը ու նիգե-
15 րը անցուց։ Եւ կ Աղբիւրի դուռը՝
Մասփայի կողմանց իշխանը՝ Քոլո-
զէի որդին Սեղղունը նորոգեց.
զանիկայ ան շինեց, ու ծածկեց.
և անոր փեղկերը, փականքը ու նի-
գերը անցուց. ու թագաւորի պար-
տէզին մօտ եղող հ Սիլովայի աւա-
զանին պարիսպը՝ մինչև Դաւիթի
քաղաքէն իջնող սանդուխները
16 շինեց։ Անկէ ետքը՝ Բեթսուրի կէս
մասին իշխանը՝ Ազբուքի որդին
Նեեմիան նորոգեց, մինչև Դաւի-
թին գերեզմաններուն դիմացը, ու
մինչև ն շինծու աւազանը, ու մինչև
17 Բեթագաբարինը։ Անկէ ետքը՝
Ղևտացիք նորոգեցին. Բանիի որ-
դին Հռէումը. անոր քովը՝ Կէի-
լայի կէս մասին իշխանը Ասաբիան՝
18 իր տեղուանքը նորոգեց։ Անկէ
ետքը անոնց եղբայրները՝ Կէիլայի
կէս մասին իշխանը՝ Ենադադի որ-
19 դին Բաւային նորոգեց։ Եւ անոր
քովը՝ Մասփայի իշխանը՝ Յեսուի
որդին Եզերը՝ միւս բաժինը նորո-
գեց, այսինքն պարսպին դարձուած-
քը, որ զինարանը ելլելու ճամբուն
20 դիմացն է։ Անկէ ետքը՝ միւս բա-
ժինը պարսպին դարձուածքէն մինչև
մեծ քահանային Եղիասիբին տանը
դուռը՝ Զաբբայի որդին Բարուքը
21 փութով նորոգեց։ Անկէ ետքը
միւս բաժինը՝ Եղիասիբին տանը
դռնէն մինչև Եղիասիբին տանը
ծայրը՝ Ակկուսի որդւոյն Ուրիային
22 որդին Մերամօթը նորոգեց։ Եւ
անկէ ետքը քահանաները՝ դաշտի
23 բնակիչները նորոգեցին։ Ու անկէ
ետքը՝ Բենիամինը ու Ասուբը ի-
րենց տուներուն առջևը նորոգեցին.
անկէ ետքը՝ Անանիայի որդւոյն՝
Մաասիային որդին Ազարիան՝ իր
24 տանը դիմացը նորոգեց։ Անկէ ետ-
քը՝ միւս բաժինը՝ Ազարիայի տու-
նէն մինչև է պարսպին դարձուած-
քը՝ մինչև անկիւնը, Ենադադի
25 որդին Բանուին նորոգեց։ Եւ Ու-
զայի որդին Փաղաղը՝ պարսպին
դարձուածքին դիմացը, ու մ բանտի
գաւիթին քովը եղող թագաւորին
վերի պալատին դուրսի աշտարակը
շինեց. ու անոր ետևէն՝ Փարոսի որ-
26 դին Փադայիան շինեց։ Եւ յ Նա-
թանայիմները՝ որոնք ն Ոփաղ կը
բնակէին, մինչև արևելեան կողմը
եղող Ջուրի դրանը դիմացը, ու
27 դուրսի աշտարակը նորոգեցին։ Ան-
կէ ետքը միւս բաժինը՝ դուրսի մեծ
աշտարակին դիմացէն մինչև Ոփաղի
պարիսպը՝ Թեկուացիք նորոգեցին։
28 ո Ձիերու դռնէն վեր՝ քահանաները
նորոգեցին՝ ամէն մարդ իր տանը
29 դիմացը։ Անկէ ետքը՝ Եմմերի որ-
դին Սադովկը՝ իր տանը դիմացը
նորոգեց. ու անկէ ետքը արև-
ելեան դրանը պահապանը՝ Սեքե-
նիայի որդին Սեմայիան նորոգեց։
30 Անկէ ետքը միւս բաժինը՝ Սեղե-
միայի որդին Անանիան, ու Սեղեփի
վեցերորդ որդին Անոնը նորոգեց.
անկէ ետքը՝ Բարաքիայի որդին
Մեսուղամը՝ իր սենեակին դիմացը
31 նորոգեց։ Անկէ ետքը՝ * Սարեփիի
որդին Մեղքիան՝ մինչև Նաթա-
նայիմներուն ու վաճառականաց
տունը Մափկաթի դրանը դիմացը՝
ու մինչև † անկիւնը ելլելու տեղը
32 նորոգեց։ Եւ անկիւնը ելլելու
տեղէն մինչև Ոչխարաց դուռը՝ ոս-
կերիչները ու վաճառականները նո-
րոգեցին։

## ԳԼ. Դ

1 Երբոր թշնամիները ծաղր կ՚ընեն, Նեեմիա աղօթք կ՚ընէ, ու գործը կը շարունակէ. 7 ու թշնամիներուն բարկութիւնը ու գաղտնի խորհուրդը իմանալով՝ պահապաններ կը դնէ. 13 գործը բանողներուն կը հրամայէ որ վրանին զէնք առնեն, 19 ու անոնց պատուէրներ կու տայ։

1 Ու ա երբոր Սանաբաղատ լսեց որ
մենք պարիսպը կը շինենք, սիր-
տը նեղացաւ, ու շատ սրդողելով
2 Հրեաները ծաղր ըրաւ։ Եւ իր
եղբարցը ու Սամարիայի զօրքին
առջևը խօսեցաւ, ու ըսաւ. Աս
տկար Հրեաները ի՞նչ կը շինեն.
միթէ թոյլտուութիւն կ՚ըլլա՞յ ա-
նոնց. միթէ զոհ պիտի զոհեն, ու
այսօ՞ր լմնցընեն. միթէ այրած
քարերը փոշիի դէզերէ՞ն պիտի կեն-

Margin notes:
ե Գլ. ԺԲ. 38։
ւ Գլ. ԺԲ. 38։
ե Գլ. Բ. 13։
ծ Գլ. Բ. 13։
կ Գլ. Բ. 14։
հ Յովհ. Թ. 7։
ն Դ Թագ. Ի. 20։ Ես. ԻԲ. 11։
շ Բ Մն. ԻԶ. 9։
է Հմր 19։
մ Երեմ. ԼԲ. 2։ ԼԳ. 1։ ԼԷ. 21։
յ Եզր. Բ. 43։ Գլ. ԺԱ. 21։
ն Բ Մն. ԻԷ. 3։
ո Գլ. Ը. 1։ 3։ ԺԲ. 37։
ո Դ Թագ. ԺԱ. 16։ Բ Մն. ԻԳ. 15։ Երեմ. ԼԱ. 40։
† Կամ՝ ոսկերչի
* Կամ՝ անկեան վերնատունը
ա Գլ. Բ. 10. 19։

3 գանացընեն ։ Եւ Բ Ամմոնացի Տու-
բիան անոր քովն էր, ու ըսաւ. Թէ
որ աղուէս մըն ալ ելլէ անոնց շի-
նածին վրայ, անոնց քարէ պարիս-
պը պիտի փլցընէ ։
4 Գ Ո՛վ մեր Աստուածը՝ լսէ. վասն
զի նախատուեցանք. ու Դ անոնց
նախատինքը իրենց գլուխը դար-
ձուր, ու զանոնք գերութեան
երկրի մէջ աւար ըլլալու մատնէ.
5 Եւ Ե անոնց անօրէնութիւնը մի՛
ծածկեր. ու քու առջեւդ անոնց
մեղքը չջնջուի. քանզի շինողնե-
րուն առջեւը քեզ բարկացուցին ։
6 Եւ պարիսպը շինեցինք. ու բո-
լոր պարիսպը մինչեւ կէսը *հասաւ.
վասն զի ժողովուրդը գործելու
սիրտ ունէր ։
7 Ու Զերբոր Սանաբաղատ, ու
Տուբիա, և Արաբացիք, ու Ամ-
մոնացիք, ու Ազովտացիք լսե-
ցին, որ Երուսաղէմին պարիսպ-
ներուն նորոգութիւնը յառաջ
կ'երթայ, ու փլած տեղուանքը
սկսեր են շինուիլ, շատ սրդողե-
8 ցան ։ Եւ Է ամէնքը մէկտեղ խօսք
ըրին, որ գան Երուսաղէմին դէմ
պատերազմ ընեն, ու անոր վնաս
9 տան ։ Բայց Ը մենք մեր Աստու-
ծոյն աղօթք ըրինք, ու †Ջեղ ա-
նոնցմէ պաշտպանելու համար" ցորեկ
ու գիշեր անոնց դէմ պահապաններ
10 դրինք ։ Եւ Յուդան ըսաւ. Բեռ-
նակիրներուն ուժը հատաւ, ու հո-
ղը շատ է. մենք պիտի չկրնանք
11 պարիսպը շինել ։ Ու մեր թշնա-
միները կ'ըսէին. Չգիտնան, ու
չտեսնեն, մինչեւ որ մենք անոնց մէ-
ջը մտնենք, ու զանոնք մեռցը-
նենք, և անոնց գործը խափանենք ։
12 Ու եղաւ որ՝ անոնց քովը բնակող
Հրէաները մեզի եկան, և տասը ան-
գամ մեզի ըսին թէ՝ Ամէն կողմանէ
ուր որ դառնաք, մեր վրայ պէտք
յարձակին ։
13 Ուստի ցած տեղուանքը՝ պա-
րըսպին ետեւը, ‡ու բարձր տեղուան-
քը" ժողովուրդը իրենց ազգա-
տոհմերուն համեմատ բաժնելով
կայնեցուցի, ու իրենց սուրերովը,
նիզակներովը ու աղեղներովը կայ-
14 նեցուցի ։ Եւ նայեցայ, ու ելայ,
և իշխաններուն ու ոստիկաններուն
ու մնացած ժողովուրդին ըսի.
Ի Անոնց երեսէն մի՛ վախնաք. յի-
շեցէ՛ք Տէրը՝ որ Ժ մեծ ու ահեղ է,
և Ի ձեր եղբայրներուն, տղաքնե-
րուն, աղջիկներուն, կնիկներուն
ու տուներուն համար պատերազմ
ըրէք ։
15 Ու երբոր մեր թշնամիները լսե-
ցին որ մենք իմացեր ենք, Լ Աս-
տուած անոնց խորհուրդը ցրուեց.

Ն.Ք.ԳՃ. 445
Բ Գւլ. Բ. 10, 19,
Գ Սաղ. ՃԻԳ. 3, 4,
Դ Սաղ. ՀԹ. 12, Առակ. Գ. 34,
Ե Սաղ. ԿԹ. 27, 28, ՃԹ. 14, 15, Երեմ. ԺԸ. 23,
* Եբր. կապուեցաւ.
Զ Հմր 1,
Է Սաղ. ԽԳ. 3, 4, 5,
Ը Սաղ. Ծ. 15,
† Եբր. անոնց երեսէն
‡ Կամ՝ չոր տեղուանքը, եւ կամ՝ յարկերու տակ
Ի Թուոց ԺԴ. 9, Բ Օր. Ա. 29,
Ժ Բ Օր. Ժ. 17,
Ի Բ Թագ. Ժ. 12,
Լ Յոբ. Ե. 12,

ու մենք ամէնքս պարիսպը շինելու
դարձանք, ամէն մէկը իր գործին ։
16 Եւ ան օրէն 'ի վեր՝ իմ մարդիկնե-
րուս կէսը կ'աշխատէին, ու կէսն
ալ՝ նիզակներ, ասպարներ, աղեղ-
ներ ու զրահներ կը բռնէին. ու
իշխանները Յուդայի բոլոր ‖ազ-
գատոհմերուն ետեւը կը կենէին ։
17 Պարիսպը շինողները, ու բեռնա-
կիրները, ու բեռցընողները՝ ամէն
մէկը իր մէկ ձեռքովը կը բանէր, ու
18 միւս ձեռքովը զէնքը կը բռնէր ։ Եւ
շինողներուն ամէն մէկը՝ իր սուրը
մէջքը կապած՝ կը գործէր. ու
19 փողահարը իմ քովս էր ։ Եւ ազ-
նուականներուն, ու ոստիկաննե-
րուն ու մնացած ժողովուրդին ը-
սի. Այս գործը մեծ ու ընդարձակ
է, ու մենք պարսպին վրայ ցրուած
20 ենք, և իրարմէ հեռու ենք. Ուստի
փողին ձայնը ուր տեղ որ լսէք,
հոն մեր քովը ժողվուիք. Խ մեզի
համար մեր Աստուածը պատերազմ
21 պիտի ընէ ։ Ու մենք այսպէս մեր
գործը կ'ընէինք. և ժողովուրդին
կէսը արշալոյսին ծագած ատենէն
մինչեւ աստղերուն երեւցած ատենը՝
22 նիզակներ բռնած կը կենային. Եւ
ան ատենը ժողովուրդին ըսի. Ա-
մէն մարդ իր ծառային հետ՝ գի-
շերները Երուսաղէմի մէջ մնայ, որ
գիշերը մեզի համար պահպանու-
թիւն ընէ, ու ցորեկը գործէ ։
23 Ու ես, ու իմ եղբայրներս, և իմ
ծառաներս, ու իմ ետեւէս եկող
պահապան մարդիկները՝ ամենեին
մեր հանդերձները չէինք հաներ,
§լուացուելու ատենէն 'ի զատ" ։

Ն.Ք.ԳՃ. 445
‖ Եբր. տունը
Խ Եւ. ՄԴ. 14, 25, Բ Օր. Ա. 30, Դ. 22, Ի. 4, Յես. ԻԳ. 10,
§ Եբր. ամէն մէկը ջուրը կը խրկէր,

## ԳԼ. Ե

1 Հրէայք իրենց պարտքերուն, գրաւներուն ու ծառայութեանը համար կը գանգատին ։ 6 Նէեմիա վաշխառուները կը յանդիմանէ, և ուխտ ընել կու տայ անոնց՝ որ ետ դարձընեն իրենց առած գրաւները. 14 կը թողու իր ռոճիկը, ու հիւրասիրութիւն կ'ընէ ։

1 Ու Ա ժողովուրդը ու անոնց կնիկ-
ները՝ իրենց Բ եղբարցը Հրէա-
ներուն դէմ մեծ գանգատ ըրին ։
2 Եւ ոմանք կ'ըսէին. Մենք մեր տը-
ղաքներովը ու աղջիկներովը շատ-
ւոր ենք. ուտելիք ծախու առ-
նենք, ու ուտենք որ ապրինք ։
3 Ոմանք ալ կ'ըսէին. Մենք մեր ար-
տերը, այգիները, ու տուները
գրաւի կը դնենք, որ սովի համար
4 ուտելիք ծախու առնենք ։ Եւ ո-
մանք կ'ըսէին. Թագաւորին հարկ
տալու համար՝ մեր արտերուն ու
այգիներուն վրայ ստակ փոխ ա-
5 ռինք ։ Ու հիմա Գ մեր մարմինը՝
մեր եղբայրներուն մարմնին պէս
է, ու մեր որդիքը՝ անոնց որդւոցը
պէս. և ահա մենք Դ մեր տղաքները

Ա Եսայ. Ե. 7,
Բ Ղև. ԻԵ. 35, 36, 37, Բ Օր. ԺԵ. 7,
Գ Եսայ. ՀԸ. 7,
Դ Եւ. Իա. 7, Ղև. ԻԵ. 39,

Ն · Ք · Դ Ք ·
445

ու աղջիկները ծառայութեան կը
ծախենք . և արդէն մեր աղջիկնե-
րէն ոմանք բռնաբար ծախուածներ
կան , ու մեր ձեռքը կարողութիւն
չկայ . որովհետև մեր արտերը ու
այգիները ուրիշներուն ձեռքն են ։
6 Ու երբոր ես անոնց աղաղակը՝ ու
աս խօսքերը լսեցի , խիստ դժուա-
7 րեցայ ։ Եւ մտքիս մէջ խորհելէն
ետև՝ ազնուականները ու ոստի-
կանները յանդիմանեցի , ու անոնց
ըսի . Դուք ամէնքդ ալ ձեր եղ-
բայրներէն ᵃվաշխ կ'առնէք . ու
8 անոնց դէմ մեծ ժողովք ըրի ։ Ու
ատենը անոնց ըսի . Մենք հեթա-
նոսներու ծախուած մեր Հրեայ եղ-
բայրները՝ մեր կարողութեանը չափ
ᵇծախու առինք , ու հիմա դուք
ձեր եղբայրնե՞րը կը ծախէք , կամ
անոնք մեզի ծախուի՞ն . և անոնք
լռեցին , ու չկրցան պատասխան
9 տալ ։ Ու ըսի . Ատ ձեր ըրածը
աղէկ բան չէ . պէտք չէ՞ որ ᶜմեր
Աստուծոյն վախովը քալէք , ᵈոր
մեզի թշնամի եղող ազգերուն նա-
10 խատինք չըլլանք ։ Ես ալ , ու
իմ եղբայրներս ու ծառաներս ալ՝
ստակ ու ցորեն փոխ տուած ենք
անոնց . բայց հիմա աս վաշխը
11 անոնց շնորհենք ։ Ես ձեզի կ'ա-
ղաչեմ , որ այսօր անոնց ետ դար-
ձրնէք անոնց արտերը , այգիները ,
ձիթենիները ու տուները . նաև
ստակին , ցորենին , գինիին ու եղին
հարիւրին մէկը՝ որ անոնցմէ կը
12 պահանջէք ։ Եւ անոնք ըսին .
Ետ պիտի դարձրնենք , ու անոնցմէ
բան մը պիտի չպահանջենք . ինչ-
պէս որ ըսիր , այնպէս պիտի ը-
նենք ։ Ու ատենը քահանաները
կանչեցի , ᵉու անոնց երդում ընել
13 տուի , որ ասանկ ընեն . Նաև
*հանդերձս ᶠթօթուեցի ու ըսի .
Ով որ աս բանը չկատարէ , իր
տունէն ու իր վաստակէն՝ Աս-
տուած այսպէս թօթուէ , ու այս-
պէս թօթուուած ու դատարկ ըլ-
լայ ։ Եւ բոլոր ժողովքը՝ Ամէն
ըսին , ու Տէրը օրհնեցին . ᵍու ժո-
ղովուրդը աս բանը կատարեց ։
14 Եւ Յուդայի երկրին մէջ անոնց
իշխանը եղած օրէս՝ Արտաշէս
թագաւորին քսաներորդ տարիէն
ʰմինչև երեսունըերկուերորդ տա-
րին՝ տասուերկու տարի՝ թէ ես և
թէ իմ եղբայրներս ⁱ†իշխանու-
15 թեան ռոճիկը չառինք ։ Բայց
ինծմէ առաջ եղող նախորդ իշ-
խանները ժողովուրդին բեռ կ'ըլ-
լային , ու անոնցմէ հաց ու գինի
կ'առնէին , քառսուն սիկղ արծա-
թէն 'ի զատ . անոնց ծառաներն
ալ ժողովուրդին բռնութիւն կ'ը-

ᵃ Ել · իբ · 25 ։ Ղև · իե · 36 ։ Եզեկ · իբ · 12 ։
ᵇ Ղև · իե · 48 ։
ᶜ Ղև · իե · 36 ։
ᵈ Բ Թագ · ժբ 14 ։ Հռով · բ · 24 ։ ա Պետ · բ · 12 ։
ᵉ Եզր · ժ · 5 ։ Երեմ · լդ · 8 , 9 ։
* Եբր · ծոցս
ᶠ Մատ · ժ · 14 ։ Գործ · ժգ · 51 ։ ժը · 6 ։
ᵍ Դ Թագ · իգ · 3 ։
ʰ Գլ · ժգ · 6 ։
ⁱ Տես ա Կոր · թ · 4 , 15 ։
† Եբր · իշխանի հացը չկերանք ։

նէին . բայց ես ᵏԱստուծմէ վախ-
16 նալով՝ այնպէս չըրի ։ Ու նաև աս
պարսպին գործին մէջ աշխատե-
ցայ . ու մենք արտ ծախու չա-
ռինք . և իմ բոլոր ծառաներս հոն
ժողվուած էին ան գործին համար ։
17 Ու Հրեաներէն , ու ոստիկաններէն
հարիւր յիսուն մարդ , ու շրջակայ
ազգերէն մեզի եկողները ˡիմ սե-
18 ղանէս կ'ուտէին ։ Եւ ᵐամէն օ-
րուան ծախքս աս էր . արջառ մը ,
ու վեց ընտիր ոչխար . և ինծի հա-
մար թռչուններ ալ կը պատրաս-
տուէր . ու տասը օրը անգամ մը
առատութեամբ ամէն տեսակ գի-
նիէն կ'ելլէր . այսու ամենայնիւ
ⁿիշխանութեան ռոճիկը չպահան-
ջեցի . վասն զի աս ժողովուրդին
վրայ եղած ծառայութիւնը ծանր
19 էր ։ ᵒՈ՛վ Աստուած իմ՝ աս ժո-
ղովուրդին բոլոր ըրածներուս հա-
մեմատ զիս 'ի բարին յիշէ ։

ᵏ Յոբ 9 ։ Առակ · ժա · 9 ։ ժբ · 13 ։
ˡ Բ Թագ · թ · 7 ։ Գ Թագ · ժը · 19 ։
ᵐ Գ Թագ · դ · 22 ։
ⁿ Յոբ 14 , 15 ։
ᵒ Գլ · ժգ · 22 ։

## ԳԼ · Զ

1 Սանաբաղատ՝ խորամանկութեամբ , երկիւ-
ղալի լուրերով , ու փորձքով ռնուած մարգա-
րէներու միջոցով կը ջանայ որ Նեեմիան վախ-
ցրնէ ։ 15 Աս գործիս լմննալուն վրայ՝ թշնա-
միները կը վախնան ։ 17 Թշնամիներուն ու
Յուդայի ազնուականներուն մէջտեղը գաղ-
տուկ հաղորդակցութիւն կ'ըլլայ ։

1 Ու ᵃերբոր Սանաբաղատ , Տու-
բիա , ու Արաբացի Գեսամ , ու
մեր միւս թշնամիները լսեցին , որ
ես պարիսպը շինեցի , ու հոն փլած
տեղ մը չմնաց , (ᵇթէպէտև մինչև
ան ատենը դռներուն փեղկերը կը-
2 րած չէի , ) Սանաբաղատ ու Գե-
սամ ᶜինծի մարդ խրկեցին՝ ու
ըսին . Եկուր , ᵈՕնովի դաշտին
գեղերուն մէջը իրարու հետ տես-
նուինք . բայց անոնք ᵉինծի չա-
3 րութիւն ընել կը խորհէին ։ Եւ
անոնց պատգամաւորներ խրկեցի ու
ըսի . Ես մեծ գործով մը զբաղած
եմ , ու չեմ կրնար իջնել . ինչու
համար գործը դադարի , երբոր զա-
նիկայ թողում , ու ձեզի իջնեմ ։
4 Եւ անոնք ինծի չորս անգամ ա-
սանկ խօսքեր խրկեցին . ես ալ
անոնց նոյն պատասխանը տուի ։
5 Ու հինգերորդ անգամին՝ Սանա-
բաղատ նոյն խօսքերով իր մանչը
ինծի խրկեց , ձեռքը մէկ բաց
6 թուղթով մը՝ Որուն մէջը այսպէս
գրուած էր . Ազգաց մէջը լսուեցաւ ,
ու Գեսամ կ'ըսէ՝ որ ᶠդուն ու
Հրեաները ապստամբիլ կը խոր-
հիք . դուն անոր համար կը շինես
պարիսպը , որ անոնց թագաւոր
7 ըլլաս , ‡ինչպէս որ կ'ըսուի ։ Ու
նաև Երուսաղեմի մէջ մարգարէ-
ներ հաստատեցիր , որ քարոզեն
ու քեզի համար ըսեն , թէ՝ Անիկայ

ᵃ Գլ · բ · 10 , 19 ։ դ · 1 , 7 ։
ᵇ Գլ · դ · 1 , 3 ։
ᶜ Առակ · իզ · 24 25 ։
ᵈ Ա Մն · ը · 12 ։ Գլ · ժա · 35 ։
ᵉ Սաղ · լէ · 12 , 32 ։
ᶠ Գլ · բ · 19 ։
‡ Եբր · աս խօսքերուն համեմատ ։

Ն.Ք.ԴՔ. 445

Հրէաստանի թագաւոր է . ու հի-
մա աս խօսքերը թագաւորին ա-
կանջը պիտի հասնի . ուրեմն ե-
կուր որ մէկտեղ խորհուրդ ընենք ։
8 Բայց ես անոր մարդ խրկեցի՝ ու
ըսի . Բանը քու ըսած խօսքերուդ
պէս չէ . հապա ատոնք դուն քու
9 սրտէդ հնարեցիր ։ (Վասն զի ա-
նոնց ամէնը մեզ կը վախցընէին՝
ըսելով . Թող անոնց ձեռքը ան
գործէն թուլնայ , որ չկատարուի ։
Ու հիմա ո՛վ Տէր՝ իմ ձեռքերս ու-
ժովցուր ։)
10 Ու ես Մետաբէէլի որդւոյն Դա-
ղայիայի որդւոյն Սեմայիային տու-
նը մտայ . և անիկայ տունը մէջ գո-
ցուած էր , ու ըսաւ . Եկուր մէկ-
տեղ Աստուծոյ տունը՝ տաճարին
մէջը երթանք , ու տաճարին դը-
ները գոցենք . վասն զի քեզ մեռ-
ցընելու կու գան . ու անոնք գիշե-
րով պիտի գան քեզ մեռցընելու ։
11 Ու ես ըսի . Միթէ ինծի պէս մար-
դը կը փախչի՞ . և ո՛վ կայ ինծի պէս
որ տաճարը մտնէ ապրելու համար .
12 չեմ մտներ ։ Ու աղէկ հասկըցայ
որ զանիկայ Աստուած խրկած չէր ,
Նեեմ.ԺԴ. 22 ։ հապա Ի իմ վրաս աս մարգարէու-
թիւնը ինքնիրմէն խօսեցաւ . վասն զի
Տուբիա ու Սանաբաղատ զանիկայ
13 վարձքով բռներ էին ։ Եւ ասոր
համար վարձքով բռներ էին զանի-
կայ , որ ես վախնամ , ու ասանկ
ընելով՝ մեղանչեմ , որ զիս բամ-
բասելու , ու իմ անունս աւրելու
Ը Գլ. ԺԴ. 29 ։ 14 պատճառ մը ունենան ։ ԸՈվ Աս-
տուած իմ՝ Տուբիան ու Սանաբա-
ղատը աս իրենց գործոցը համե-
Ի Եզեկ. ԺԳ. 17 ։ մատ , ու Նովադիա Ի մարգարէու-
հին , ու զիս վախցընող միւս մար-
գարէները յիշէ ։
Իրր 445 15 Եւ պարիսպը Իլուլ ամսուն քը-
սանուհինգերորդ օրը՝ յիսունուեր-
16 կու օրուան մէջ լմնցաւ ։ Ու
Ժ Գլ. Բ. 10 ։ Դ. 1. 7 ։ Զ. 1 ։ Ժ երբոր մեր ամէն թշնամիները լսե-
ցին , մեր բոլորտիքը եղող ամէն
Ի Սաղ. ՃԺԶ. 2 ։ ազգերը վախցան ու շատ ամչցան .
ու Ի իմացան որ աս գործը մեր Աս-
տուծոյն օգնականութեամբը կա-
տարուեցաւ ։
17 Եւ ան օրերը՝ Յուդայի ազնուա-
կաններէն՝ Տուբիային շատ նամակ-
ներ կ՚երթար . Տուբիայէն ալ ա-
18 նոնց կու գար . Վասն զի Յուդա-
յին շատ մարդիկները անոր հետ
երդումով միաբաներ էին . քանզի
անիկայ Արահեան Սեքենիային փե-
սան էր . ու անոր որդին Յօհանա-
նը՝ Բարաքիայի որդւոյն Մեսու-
19 ղամին աղջիկը առեր էր ։ Նաև իմ
առջևս անոր աղէկութիւնները կը
զրուցէին , ու իմ խօսքերս անոր կը
հասցընէին . և Տուբիա ինծի նա-
մակներ կը խրկէր զիս վախցընելու
համար ։

Ն.Ք.ԴՔ. Իրր 445

ԳԼ. Է

1 Նեեմիա՝ Երուսաղեմին պահպանութիւնը Ա-
նանիին ու Անանիային կը յանձնէ ։ 5 Առջի
անգամ Բաբիլոնէն դարձող 9 ժողովուրդին ,
39 քահանաներուն , 43 Ղևտացիներուն , 46
Նաթանայիմներուն , 57 Սողոմոնի ծառանե-
րուն , 63 և իրենց ազգահամարը կորսնցու-
ցած քահանաներուն ցուցակը ։ 66 Անոնց ա-
մենուն թիւը՝ իրենց ստացուածներովը ։ 70
Անոնց մատուցած ընծաները ։

1 Ու երբոր պարիսպը լմնցաւ , — Գլ. Զ. 1 ։
Ա դռներուն փեղկերը անցուցի .
ու դռնապաններ , երգեցողներ ու
2 Ղևտացիներ դրուեցան . Եւ իմ
եղբայրս Անանին , ու պալատին իշ-
խանը Անանիան (որ հաւատարիմ ,
ու շատերէն աւելի Բ Աստուծմէ Բ Եւ. ԺԸ. 21 ։
վախցող մարդ մըն էր ,) Երուսա-
3 ղեմի վրայ դրի , Ու անոնց ըսի .
Մինչև որ արևը չտաքնայ , Երուսա-
ղեմին դռները չբացուին . և իրենց
ներկայութեամբը դռները գոցեն ,
ու նիգերը դնեն , ու Երուսաղեմի
բնակիչներէն պահապաններ կար-
գեն , ամէն մէկը իր պահպանու-
թեանը մէջ , ու ամէն մէկը իր տա-
նը դիմացը ։
4 Քաղաքը ընդարձակ ու մեծ էր .
բայց մէջի ժողովուրդը քիչ էր , ու
5 տուներ շինուած չէր ։ Եւ իմ Աս-
տուածս իմ սրտիս մէջը դրաւ , որ
ազնուականները , ոստիկանները ու
ժողովուրդը ժողվեմ որ արձանագ-
րուին . ու առջի անգամ գերութե-
նէն ելլողներուն մէկ ազգաբանու-
թեան գիրքը գտայ . ու անոր մէջը
այսպէս գրուած գտայ ։
6 Բաբիլոնի Նաբուգոդոնոսոր թա- Իրր 536
գաւորին տարած գերիներէն ելլող
Գ գաւառի բնակիչները ասոնք էին , Գ Եզր. Բ. 1 ։
որոնք Երուսաղէմը ու Յուդան
դարձան , ամէն մէկը իր քաղաքը .
7 Ու Զօրաբաբէլին , Յեսուին ,
Նէեմիային , Ազարիային , Ռաա-
միային , Նաեմանիին , Մուրթ-
քէին , Բաղասանին , Մասփարա-
թին , Բագուէին , Նաւումին ու
Բաանային հետ եկան ։ Եւ աս էր
Իսրայէլի ժողովուրդին մարդոցը
8 թիւը . Փարոսի որդիքը՝ երկու
հազար հարիւր եօթանասունուեր-
9 կու . Սափատիայի որդիքը՝ իրեք
10 հարիւր եօթանասունուերկու . Ա-
րահի որդիքը՝ վեց հարիւր յիսուն
11 ուերկու . Փաաթ Մովաբի որդիքը՝
Յեսուի ու Յովաբի որդիներէն՝ եր-
կու հազար ութը հարիւր տասն-
12 ուութը . Եղամի որդիքը՝ հազար
13 երկու հարիւր յիսունուչորս . Զա-
թուի որդիքը՝ ութը հարիւր քառ-
14 սունուհինգ . Զաքքայի որդիքը՝
15 եօթը հարիւր վաթսուն . Բանուիի

Ն․ Ք․ ՉԲ․
Իրր 515

դառնար․ անիկայ մէյմըն ալ թա-
գաւորին քովը չէր երթար, բայց
միայն՝ թէ որ թագաւորը անոր
հաւնէր, ու անիկայ անունով
կանչուէր։
15 Եւ թագաւորին քովը երթալու
կարգը՝ Մուրթքէին *ի հօրեղբօրը Ա-
բիքէլին աղջկանը՝ Եսթերին գա-
լով, (որն որ Մուրթքէ իրեն աղ-
ջիկ ըրեր էր,) անիկայ կանանց
պահապանը եղող թագաւորին Հե-
գէ ներքինիին ըսածէն 'ի զատ' ու-
րիշ բան չխնդրեց. ու Եսթեր՝ բո-
լոր զինքը տեսնողներուն առջևը
16 շնորհք գտաւ։ Ու Եսթեր՝ Ասուէ-
րոս թագաւորին քովը՝ անոր թա-
գաւորական պալատը առնուեցաւ
տասներորդ ամիսը, այսինքն Թէ-
բէթ ամսուն մէջ, անոր թագա-
ւորութեանը եօթներորդ տարին։
17 Եւ թագաւորը՝ Եսթերը ամէն կը-
նիկներէն աւելի սիրեց, ու անիկայ՝
անոր առջևը ամէն աղջիկներէն ա-
ւելի սէր ու շնորհք գտաւ. և թա-
գաւորական թագը անոր գլուխը
դրաւ, ու զանիկայ Վաշթիին տե-
18 ղը թագուհի ըրաւ։ Եւ թագա-
ւորը իր բոլոր իշխաններուն ու ծա-
ռաներուն *մեծ կոչունք ըրաւ,
այսինքն Եսթերի կոչունք. ու գա-
ւառներուն հանգստութիւն շնոր-
հեց, և թագաւորի վայելուչ պար-
գևներ տուաւ։
19 Ու երբոր երկրորդ անգամ աղ-
ջիկներ ժողվեցին, Մուրթքէ՝
*թագաւորին դուռը կը նստէր։
20 *Եսթեր իր հայրենիքը ու իր ազգը
յայտնած չէր, ինչպէս որ Մուրթ-
քէ անոր պատուիրեր էր. վասն զի
Եսթեր՝ Մուրթքէին ըսածը կ'ը-
նէր, անոր քովը մեծցած ատենին
պէս։
21 Ան օրերը՝ երբոր Մուրթքէ՝ թա-
գաւորին դուռը կը նստէր, դրան
պահապաններէն Բիգթան ու Թա-
րէս անունով՝ թագաւորին երկու
ներքինիները սրդողելով, Ասուէ-
րոս թագաւորին վրայ ձեռք եր-
22 կնցընել *խորհեցան։ Եւ Մուրթ-
քէն այս բանը իմանալով՝ *Եսթեր
թագուհիին յայտնեց. ու Եսթեր՝
Մուրթքէին անունովը թագաւորին
23 պատմեց։ Եւ այս բանը քննուելով
ճշմարիտ գտնուեցաւ. ու անոնց
երկուքն ալ ծառի վրայ կախուե-
ցան. ու թագաւորին առջևը *ժա-
մանակագրութեան գրքին մէջը գը-
րուեցաւ։

Ի Հմր 7․
Իրր 514
Ժ Գլ․ Ա․ 3․
Ի Հմր 21․ Գլ․ Գ․ 2․
Լ Հմր 10․
Ի Գլ․ Զ․ 2․
*Եբր․ փըն-տըռեցին․
Ժ Գլ․ Զ․ 2․
Լ Գլ․ Զ․ 1․

## ԳԼ․ Գ

1 Համան՝ թագաւորէն պատիւ կը ստանայ, ու Մուրթքէէն անարգուելուն համար՝ բոլոր Հրէաներէն վրէժ առնել կ'ուզէ։ 7 Վիճակ կը ձգէ։ 8 Համան զրպարտութեան խօսքերով թագաւորէն հրաման կը ստանայ Հրէաները մեռցընելու։

1 Ասոր բաներէն ետքը՝ Ասուէրոս
թագաւորը՝ *Ագագացի Ամա-
դաթային որդին Համանը մեծցուց,
ու զանիկայ բարձրացուց, ու անոր
աթոռը՝ իր հետը եղող բոլոր իշ-
2 խաններուն վերի կողմը դրաւ։ Եւ
*թագաւորին դուռը եղող թա-
գաւորին բոլոր ծառաները՝ ծնրադ-
րութեամբ երկրպագութիւն կ'ը-
նէին Համանին. վասն զի թագա-
ւորը անոր համար այսպէս հրամա-
յեր էր. բայց Մուրթքէ *ծնրադ-
րութիւն ու երկրպագութիւն չը-
3 րաւ։ Եւ թագաւորին դուռը
եղող՝ թագաւորին ծառաները
Մուրթքէին ըսին. Ինչո՞ւ համար
դուն *թագաւորին հրամանէն
4 դուրս կ'ելլես։ Ու անոնք ամէն օր
անոր կը զրուցէին. ու երբոր ա-
նոնց մտիկ չըրաւ, ան ատենը Հա-
մանին իմացուցին, որ տեսնեն թէ
†Մուրթքէին բանը ուր պիտի կա-
յանայ". վասն զի անիկայ՝ իր Հը-
րէայ ըլլալը անոնց զրուցեր էր։
5 Ու երբոր Համան տեսաւ որ Մուրթ-
քէ իրեն *ծնրադրութիւն ու երկր-
պագութիւն չըներ, Համան *լիստ
6 բարկացաւ։ Ու մինակ Մուրթքէին
ձեռք զարնելը անոր աչքին ցած
բան մը երեցաւ. և որովհետև
Մուրթքէին ազգը անոր իմացուցեր
էին, Համան՝ Մուրթքէին ազգը՝
այսինքն Ասուէրոսին բոլոր թագա-
ւորութեանը մէջ եղող *բոլոր Հը-
րէաները կորսնցընել խորհեցաւ։
7 Առաջին ամսուն՝ այսինքն Նիսան
ամսուն մէջ, Ասուէրոս թագաւո-
րին երկոտասաներորդ տարին՝ մին-
չև երկոտասաներորդ ամիսը՝ այսինքն
Ադար ամիսը, օրէ օր ու ամսէ ա-
միս՝ Համանին առջևը Փուր՝ այս-
ինքն վիճակ ձգեցին։
8 Եւ Համան՝ Ասուէրոս թագաւո-
րին ըսաւ. Քու թագաւորութեանդ
բոլոր գաւառներուն մէջ՝ ժողո-
վուրդներուն մէջը ցրուած ու տա-
րածուած ազգ մը կայ. ու *անոնց
օրէնքները ամէն ժողովուրդներուն
օրէնքներէն տարբեր են. ու թագա-
ւորին օրէնքները չեն կատարեր.
ուստի չվայելեր որ թագաւորը ա-
9 նոնց թողլտուութիւն ընէ. Թէ
որ թագաւորին հաճոյ կ'երևնայ,
‡հրաման տրուի" որ զանոնք կոր-
սնցընեն, ու ես պաշտօնատարնե-
րուն ձեռքը՝ թագաւորին գանձը
բերելու համար՝ տասը հազար տա-
ղանդ արծաթ կը կշռեմ *ու տամ։
10 Ան ատենը թագաւորը՝ իր ձեռքէն
*իր մատնին *հանեց, ու զանիկայ
Հրէից *թշնամիին՝ Ագագացի Ա-

Ն․ Ք․ ՉԲ․
Իրր 510
*Թուոց Իդ․ 7․ Ա Թագ․ ԺԵ․ 8․
*Գլ․ Բ․ 19․
*Հմր 5․ Սաղ․ ԺԵ․ 4․
*Հմր 2․
†Կամ՝ արդ-եօք Մուրթ-քէ իր խօս-քերուն վը-րայ հաս-տատ պիտի կենայ․
*Հմր 2․ Գլ․ Ե․ 9․
*Դան․ Գ․ 19․
*Սաղ․ ԶԳ․ 4․
510
*Գլ․ Թ․ 24․
*Եզր․ Դ․ 13․ Գոր․ ԺԶ․ 20․
‡Եբր․ գը-րուի
*Գլ․ Ը․ 2, 8․
*Ծն․ ԽԱ․ 42․
*Գլ․ Է․ 6․

Ն. Ք. Վ. Ք. 510

* Եբր. կըշռեմ,

մադաթային որդւոյն Համանին
11 տուաւ ։ Եւ թագաւորը Համանին
ըսաւ . Ան արծաթը քեզի *կու
տամ, ու ան ազգն ալ, որ քու
աչքերուդ հաճոյ երևցածը ընես
անոնց ։

12 Եւ առաջին ամսուն երեքտասաներորդ օրը՝ Ի թագաւորին գրագիրները կանչուեցան, ու թագաւորին նախարարներուն, ու ամէն
գաւառներուն վրայ եղող կուսակալներուն, և ամէն գաւառին ամէն
մէկ ժողովուրդին իշխաններուն
Ծ իրենց գրովը, ու ամէն ժողովուրդին իր լեզուովը՝ Համանին բոլոր
հրամայածները գրուեցաւ . Կ Ասուերոս թագաւորին անունովը
գրուեցաւ, ու թագաւորին մատ
13 նիովը կնքուեցաւ ։ Եւ Հ սուրհանդակներու ձեռքով թագաւորին
ամէն գաւառները հրովարտակներ
խրկուեցաւ, որ Ձ մէկ օրուան մէջ՝
երկոտասաներորդ ամսուն՝ այսինքն
Ադար ամսուն երեքտասաներորդ
օրը՝ բոլոր Հրեաները՝ երիտասարդներէն մինչև ծերերը, նաև տղաքները ու կնիկները կոտորեն, մեռցընեն, ու կորսնցընեն . և Ղ անոնց
ստացուածքը իբրև աւար յափշտակեն ։
14 Ճ Այս հրովարտակին պատճէնը ալ
էր՝ որ հրամանը ամէն մէկ գաւառին մէջը հրատարակուի, ու ամէն
ժողովուրդներուն բացատրուի, որ
ան օրուան համար պատրաստ ըլլա
15 նուին ։ Սուրհանդակները թագաւորին հրամանէն ստիպուելով՝
ճամբայ ելան, ու հրովարտակը
Շուշան մայրաքաղաքին մէջն ալ
† հրատարակուեցաւ . և թագաւորը ու Համանը խմելու նստան .
սակայն Մ Շուշան քաղաքը շփոթութեան մէջ էր ։

Ի Գլ. ը. 9:
Ծ Գլ. ա. 22: ը. 9:
Կ Գ Թագ. իա. 8: Գլ. ը. 8, 10:
Հ Գլ. ը. 10:
Ձ Գլ. ը. 12. Թ:
Ղ Գլ. ը. 11:
Ճ Գլ. ը. 13, 14:
† Եբր. տըրուեցաւ.
Մ տես Գլ. ը. 15: Առակ. իթ. 2:

ԳԼ. Դ

1 Մուրթքէ ու Հրեաները մեծ սուգի մէջ կը մտնեն ։ 4 Եսթեր աս բանը լսելով՝ Մուրթքէին մարդ կը խրկէ . ան ալ պատճառը կ'իմացընէ, ու զանիկայ կը խրատէ որ թագաւորէն ազատութիւն խնդրէ իր ազգին համար ։ 10 Եսթեր իր անկարող ըլլալը յառաջ բերելուն համար, Մուրթքէէն կը յանդիմանուի ։ 15 Ուստի ծոմ կը պահէ, ու աս գործը իր վրայ կ'առնէ ։

իբր 510

1 Ու երբոր Մուրթքէ բոլոր եղածները իմացաւ, Մուրթքէ Ա իր
հանդերձները պատռեց, և քուրձ
հագաւ, ու վրան Բ մոխիր ցանեց, ու
քաղաքին հրապարակը ելլելով,
Գ մեծ ու ‡ դառն ձայնով աղաղա
2 կեց . Ու մինչև թագաւորին դրանը
առջևը եկաւ հասաւ . վասն զի
քուրձ հագած մարդ մը չէր կրնար
թագաւորին դռնէն ներս մտնել ։
3 Եւ ամէն գաւառներուն մէջ՝ ուր

Ա Բ Թագ. ա. 11:
Բ Յես. է. 6: Եզեկ. իէ. 30:
Գ Ծն. իէ. 34:
‡ Եբր. դառն

Ն. Ք. Վ. Ք. իբր 510

որ թագաւորին հրամանը ու հրովարտակը կը հասնէր, Հրեաները
մեծ սուգ կ'ունենային, ծոմ կը
կենային, կու լային ու կ'ողբային .
Դ շատերը Դ քուրձի ու մոխիրի վըրայ կը պառկէին ։

Դ Ես. ծը. 5: Դան. թ. 3:

4 Ու Եսթերին աղախինները ու
ներքինիները եկան անոր պատմեցին . և թագուհին մեծապէս խըռովեցաւ, ու հանդերձներ խրկեց
որ Մուրթքէին հագցընեն, ու անոր վրայէն քուրձը հանեն . բայց
5 անիկայ չընդունեց ։ Ու Եսթեր՝
Հաթաքը կանչեց, որ թագաւորին
ներքինիներուն մէկն էր, (որն որ
թագաւորը անոր սպասաւոր տուեր
էր,) ու անոր հրամայեց որ Մուրթքէէն հասկընայ՝ թէ աս ինչ պիտի
6 ըլլայ, ու ինչո՞ւ համար է ։ Եւ
Հաթաք Մուրթքէին գնաց, որ
թագաւորին դրանը առջին եղող
քաղաքի հրապարակին մէջն էր ։
7 Ու Մուրթքէ բոլոր իրեն պատահած բաները անոր յայտնեց, նաև
Համանին Ե սակարկութիւնը՝ որով
թագաւորին գանձին արծաթ տալ
խոստացեր էր Հրեաներուն համար,
8 որ զանոնք կորսնցընէ ։ Եւ զանոնք կորսնցընելու համար՝ Շուշանի մէջ Զ հրատարակուած հրովարտակին օրինակը անոր տուաւ,
որ Եսթերին ցուցընէ ու հասկըցընէ, և անոր պատուիրէ որ թագաւորին քովը երթայ, և անոր աղաչէ, ու անոր առջևը իր ազգին հա
9 մար աղաչանքով խնդրէ ։ Եւ Հաթաք գնաց, ու Մուրթքէին խօսքերը Եսթերին պատմեց ։

Ե Գլ. գ. 9:
Զ Գլ. գ. 14, 15:

10 Ու Եսթեր՝ Հաթաքին հետ խօսեցաւ, ու հրամայեց որ Մուրթքէին այսպէս պատասխան տանի .
11 Թագաւորին բոլոր ծառաները, ու
թագաւորին գաւառներուն ժողովուրդները աղէկ գիտեն որ՝ մէկ էրիկ կամ կնիկ մարդ մը թէ որ չըկանչուած՝ թագաւորին Է ներքին
գաւիթը մտնէ, Ը զանիկայ մեռցընելու համար մէկ օրէնք մը կայ .
ու անիկայ միայն կ'ապրի՝ Թ որուն
վրայ թագաւորը իր ոսկի գաւազանը կ'երկնցընէ . և հիմա երսուն օր
է որ ես թագաւորին քովը մտնելու
12 կանչուած չեմ ։ Ու Եսթերին
խօսքերը Մուրթքէին պատմեցին ։
13 Եւ Մուրթքէ ըսաւ որ՝ Եսթերին
այսպէս պատասխան տանին . Դուն
մի՛ կարծեր որ թագաւորին տունը
ըլլալովդ՝ բոլոր Հրեաներէն՝ դուն
14 միայն պիտի ազատիս ։ Վասն զի
աս ժամանակիս մէջ թէ որ դուն
լռես, Հրեաներուն մէկ ուրիշ տեղէն օգնութիւն ու ազատութիւն
կու գայ . բայց դուն, ու քու հօրդ

Է Գլ. ե. 1:
Ը Դան. բ. 9:
Թ Գլ. ե. 2: ը. 4:

Ն.Ք.Գ.Ք. Իրր 510

տունը կը կորսուիք . և ո՞վ գիտէ ,
դուցէ դուն ասանկ մէկ ատենի մը
համար թագուհի եղար ։
15 Ու Եսթեր ըսաւ որ՝ Մուրթքէին
16 այսպէս պատասխան տանին . Գնա՛
դուն Շուշանի մէջ եղող բոլոր
Հրէաները ժողվէ՛ , ու ինծի համար
ծ Տես Գլ. Ե. 1
ծոմ պահեցէք , գիշեր ցորեկ ծ իրեք
օր մի՛ ուտէք ու մի՛ խմէք . նոյն-
պէս ալ ես իմ աղախիններովս ծոմ
կը պահեմ , ու այնպէս թագաւո-
րին առջևը կ'ելլեմ ; թէպէտև
է Տես Ծն. ԽԳ. 14
օրէնքի դէմ է . է Ու թէ որ մեռ-
17 նիմ՝ թող մեռնիմ ։ Ան ատենը
Մուրթքէ գնաց , ու ըրաւ ան ա-
մենուն համեմատ՝ որ Եսթեր իրեն
պատուիրեր էր ։

## ԳԼ. Ե

1 Եսթեր իր անձը վտանգի մէջ դնելով՝ թագաւորին առջևը շնորհք կը գտնէ , և թագաւորը ու Համանը կոչունքի կը հրաւիրէ ։ 6 Թագաւորը կը քաջալերէ Եսթերը՝ որ իր աղաչանքը զրուցէ . բայց անիկայ հետևեալ օրուան ուրիշ կոչունքի մը կը հրաւիրէ զանոնք ։ 9 Համան՝ իր յառաջանալուն վրայ կը հպարտանայ . բայց երբոր Մուրթքէ զանիկայ չպատուեր , խիստ կը դժուարի ։ 14 Զերեսին տուած խրատին համեմատ Մուրթքէին համար կախաղան մը շինել կու տայ ։

ա Տես Գլ. Դ. 16
1 Ու եղաւ որ՝ ա երրորդ օրը Եսթեր
իր թագաւորական զգեստները
հագաւ , ու թագաւորին տանը
բ Տես Գլ. Դ. 11 . Զ. 4
բ ներքին գաւիթին մէջը՝ թա-
գաւորին տանը դիմացը կայնե-
ցաւ . և թագաւորը՝ թագաւորա-
կան պալատին մէջը՝ պալատին
դրանը դիմացը՝ իր թագաւորա-
կան աթոռին վրայ նստեր էր ։
2 Ու երբոր թագաւորը Եսթեր թա-
գուհին տեսաւ՝ որ գաւիթին մէջը
գ Առակ. ԻԱ. 1
կը կայնէր , գ Եսթեր շնորհք գտաւ
դ Գլ. Դ. 11 . Ը. 4
անոր առջևը , և դ թագաւորը իր
ձեռքը եղած ոսկի գաւազանը՝
Եսթերին երկընցուց . ու Եսթեր
մօտեցաւ , ու գաւազանին ծայրին
3 դպաւ ։ Եւ թագաւորը անոր
ըսաւ . Ո՛վ Եսթեր թագուհի՝ քե-
զի ի՞նչ եղաւ , ու ուզածդ ի՞նչ է .
ե Մար. Զ. 23
ե մինչև թագաւորութեանը կէսը
4 քեզի տրուի ։ Ու Եսթեր ըսաւ .
Թէ որ թագաւորը կը հաճի , այսօր
թագաւորը Համանին հետ իրեն
5 ըրած կոչունքիս գայ ։ Եւ թա-
գաւորը ըսաւ . Շուտո՛վ Համանը
կանչեցէք , որ Եսթերին ըսածը
կատարէ . ու թագաւորը Համա-
նին հետ՝ Եսթերին ըրած կոչուն-
քին գնաց ։
զ Գլ. Է. 2
6 զ Ու երբոր գինի կը խմէին՝
է Գլ. Թ. 12
թագաւորը Եսթերին ըսաւ . է Ի՞նչ
է քու խնդիրքդ՝ ըսէ , ու քեզի
պիտի տրուի . ի՞նչ է քու աղա-
չանքդ . մինչև թագաւորութեանը
7 կէսը պիտի կատարուի ։ Ու Ես-
թեր պատասխան տուաւ ու ըսաւ .
Իմ աղաչանքս ու խնդիրքս ա՛ս է .
8 Թէ որ թագաւորին առջևը շնորհք
գտայ , ու թէ որ թագաւորը կը
հաճի իմ խնդիրքս տալու ու իմ
աղաչանքս կատարելու , թող թա-
գաւորը ու Համանը նորէն իրենց
համար ընելու կոչունքիս գան ,
ու վաղը թագաւորին խօսքին պէս
կ'ընեմ ։
9 Եւ Համան ան օրը զուարթ և
ուրախ սրտով դուրս ելաւ . բայց
երբոր Համան՝ թագաւորին դրանը
ը Գլ. Գ. 5
մէջ Մուրթքէն տեսաւ , ը որ ոտք
չէր ելլեր , ու իր տեղէն չէր շար-
ժեր , Համանին սիրտը շատ նե-
10 ղացաւ Մուրթքէին վրայ ։ Բայց
թ Բ Թագ. ԺԳ. 22
Համան թ ինքզինքը զսպելով՝ իր
տունը գնաց . ու մարդ խրկեց՝ իր
բարեկամները ու իր կնիկը Զե-
11 րեսը կանչել տուաւ ։ Եւ Հա-
ման պատմեց անոնց իր հարստու-
ժ Գլ. Թ. 7, Ժ.
թեանը փառքը , ու ժ իր որդւոցը
շատութիւնը , և ան ամէն բաները՝
որոնցմով թագաւորը զինքը մեծ-
ցուցեր էր , և թէ ինչպէս իշխան-
ներէն ու թագաւորին ծառաներէն
ի Գլ. Գ. 1
12 աւելի ի բարձրացուցեր էր ։ Ու Հա-
ման ըսաւ . Նաև Եսթեր թագու-
հին՝ թագաւորին հետ ինծմէ զատ
* Եբր. չմըտ-ցուց
մէկը * չհրաւիրեց իր ըրած կոչուն-
քին . ու վաղուան համար ալ զիս
13 թագաւորին հետ հրաւիրեց ։ Բայց
աս ամէնէն բնաւ գոհ չեմ , քանի
որ Հրէայ Մուրթքէն թագաւորին
14 դուռը նստած կը տեսնեմ ։ Եւ
անոր կնիկը Զերէս , ու անոր բոլոր
լ Գլ. Է. 9
բարեկամները անոր ըսին . լ Յի-
սուն կանգուն բարձրութեամբ
փայտ մը թող շինուի , ու վաղը
խ Գլ. Զ. 4
առտու խ թագաւորին ըսէ , որ
Մուրթքէն անոր վրայ կախուի . և
դուն թագաւորին հետ՝ ուրախ
սրտով կոչունքը գնա ։ Ու աս
խօսքը Համանին հաճոյ երևցաւ ,
ծ Գլ. Է. 10
ու ծ փայտը պատրաստեց ։

## ԳԼ. Զ

1 Ասուերոս՝ յիշատակաց գրքին մէջը Մուրթքէին հաւատարիմ ծառայութիւնը կարդալով՝ կը մտածէ որ անոր փոխարէն մը ընէ ։ 4 Համան կ'երթայ Մուրթքէն կախելու համար թագաւորէն հրաման խնդրելու , սակայն անգիտութեամբ թագաւորին խրատ կու տայ որ անոր պատիւ ընէ ։ 12 Համան իր անբաղդութեանը համար կը գանգատի , իսկ անոր բարեկամները անոր վերջին կորուստը կը գուշակեն ։

1 Ան գիշերը թագաւորին քունը
ա Գլ. Բ. 23
փախաւ , ու հրամայեց որ ա դի-
պուածները պատմող յիշատակաց
գիրքը բերեն . ու թագաւորին
2 առջևը կարդացուեցաւ ։ Ու գր-
րուած գտնուեցաւ որ Մուրթքէ՝
դրանը պահպանութիւն ընող թա-

Ն. Ք. Ծ. Ք. իբր 510

ա Գլ. Բ. 21.

թագաւորին երկու ներքինիներուն
ա Բիգթանին ու Թարեսին համար
իմացուցեր էր, թէ անոնք Ասուե-
րոս թագաւորին վրայ ձեռք եր-
3 կընցնել ուզեր էին։ Եւ թագա-
ւորը ըսաւ. Ասոր փոխարէն ի՞նչ
պատիւ կամ մեծութիւն տրուեցաւ
Մուրթքէին. ու թագաւորին ծա-
ռայութիւն ընող մանչերը ըսին.
4 Անոր բան մը չեղաւ։ Եւ թագա-
ւորը ըսաւ. Գաւիթը ո՞վ կայ.
(ու Համան՝ թագաւորին պալատին
դուրսի գաւիթը եկեր էր բ թա-
գաւորին խօսելու, որ Մուրթքէն
կախէ ան փայտին վրայ, որ գ ինք
անոր համար պատրաստեր էր.)
5 Եւ թագաւորին մանչերը անոր ը-
սին. Ահա Համան գաւիթը կը
սպասէ. ու թագաւորը ըսաւ.
Թող ներս գայ։
6 Ու երբոր Համան ներս մտաւ,
թագաւորը անոր ըսաւ. Ի՞նչ ը-
նել պէտք է այն մարդուն, որուն
որ թագաւորը պատիւ ընել կ'ու-
զէ։ Եւ Համան իր սրտին մէջը
ըսաւ. Թագաւորը ինծմէ զատ
որո՞ւն պատիւ ընել պիտի ուզէ։
7 Ու Համան ըսաւ թագաւորին.
Այն մարդուն համար՝ որուն որ թա-
8 գաւորը պատիւ ընել կ'ուզէ, թա-
գաւորին հագած թագաւորական
զգեստը, ու դ թագաւորին հեծած
ձին, ու անոր գլուխը դրուած թա-
9 գաւորական թագը բերեն. Եւ
զգեստը ու ձին՝ թագաւորին խիստ
պատուաւոր իշխաններէն մէկուն
ձեռքը տրուի. ու հագցընեն այն
մարդուն՝ որուն որ թագաւորը
պատիւ ընել կ'ուզէ. ու ձիին վրայ
հեծցընեն, ե քաղաքին փողոցին
մէջէն տանին, ու առջեւէն կանչեն
ու ըսեն. Այսպէս պիտի ըլլայ այն
մարդուն, որուն որ թագաւորը
10 պատիւ տալ կ'ուզէ։ Այն ատենը
թագաւորը Համանին ըսաւ. Շու-
տով ըսածիդ պէս զգեստը ու ձին
առ, ու թագաւորին դրանը նստող
Հրեայ Մուրթքէին այնպէս ըրէ.
քու ըսածէդ բնաւ մէկ բան մը
պակաս չըլլայ։
11 Եւ Համան զգեստը ու ձին ա-
ռաւ, ու զգեստը Մուրթքէին հագ-
ցընելով՝ զանիկայ ձիին վրայ հեծ-
ցուց, ու քաղաքին փողոցէն տա-
րաւ, ու առջեւէն * կը կանչէր.
Այսպէս պիտի ըլլայ այն մարդուն,
որուն որ թագաւորը պատիւ տալ
12 կ'ուզէ։ Եւ Մուրթքէ՝ թագաւո-
րին դուռը դարձաւ. բայց Համան
տրտում ու զ գլուխը ծածկած՝ շու-
13 տով իր տունը քաշուեցաւ։ Եւ
Համան՝ իր կնկանը Զերեսին, ու
բոլոր բարեկամներուն պատմեց ա-
մէն ինչ որ իր գլուխը եկած էր. և
անոր իմաստուններըը, ու անոր
կնիկը Զերէս՝ անոր ըսին. Թէ որ
Մուրթքէն՝ (որուն առջեւը դուն
իյնալու սկսար,) Հրէից ազգէն
է, դուն անոր պիտի չյաղթես.
հապա անոր առջեւը անշուշտ պիտի
14 իյնաս։ Երբոր անոնք տակաւին
անոր հետ կը խօսէին, թագաւորին
ներքինիները հասան, որ Համանը
շուտով ա Եսթերին պատրաստած
կոչունքին տանին։

գ Տես գլ. Ե. 1.
դ Գլ. Ե. 14.
ե Գ Թագ. Ա. 33.
զ Ծնն. խա. 43.
* Կամ՝ մէկը կը կանչէր.
է Բ Թագ. ԺԵ. 30. Երեմ. ԺԴ. 3. 4.
ը Բ Մն. Իզ. 20.

Ն. Ք. Ծ. Ք. իբր 510

ա Գլ. Ե. 8.

## ԳԼ. Է

1 Եսթեր՝ թագաւորին ու Համանին կոչունք ը-
րած ատենը՝ իր կեանքը ու իր ազգին կեանքը
շնորհել կը խնդրէ. 5 Համանին համար կը
գանգատի։ 7 Թագաւորը իր բարկութեանը
մէջ՝ լսելով որ Համան կախաղան մը շիներ է
Մուրթքէին համար, կը հրամայէ որ զանիկայ
անոր վրայ կախեն։

1 Եւ թագաւորը Համանին հետ՝
Եսթեր թագուհիին քովը † կո-
2 չունքի գնաց։ Ու թագաւորը երկ-
րորդ օրն ալ՝ ա գինի խմելու ատենը
Եսթերին ըսաւ. Ո՛վ Եսթեր թա-
գուհի, ի՞նչ է քու խնդիրքդ.
պիտոյքն, ու քեզի պիտի տրուի. և
ի՞նչ է քու աղաչանքդ. մինչև
թագաւորութեանը կէսը պիտի
կատարուի։
3 Ու Եսթեր թագուհին պատաս-
խան տուաւ ու ըսաւ. Թէ որ քու
առջեւդ շնորհք գտայ՝ ո՛վ թագա-
ւոր, ու թէ որ թագաւորին հաճոյ
կ'երևնայ, խնդիրքովս իմ հոգիս՝
ու աղաչանքովս իմ ազգս ինծի
4 տրուի. Վասն զի թէ ես և թէ իմ
ազգս՝ կոտորուելու, մեռնելու ու
բնաջինջ ըլլալու բ ծախուեցանք.
ու թէ որ ծառայ ու աղախին ըլ-
լալու ծախուէինք, բան մը չէի
խօսեր. թէպէտև թշնամին՝ թա-
գաւորին փոխած վնասը չէր կրնար
հատուցանել։
5 Եւ Ասուերոս թագաւորը խօսե-
ցաւ, ու Եսթեր թագուհիին ը-
սաւ. Ո՞վ է անիկայ, և ո՞ւր է
անիկայ, որ աս բանը ընելու հա-
6 մարձակեցաւ։ Ու Եսթեր ըսաւ.
Հակառակորդը ու թշնամին, աս
չար Համանն է. ու Համան՝ թա-
գաւորին ու թագուհիին երեսէն
խիստ վախցաւ։
7 Եւ թագաւորը գինի խմելէն
բարկութեամբ ելաւ, պալատին
պարտէզը գնաց. բայց Համան հոն
մնաց, որ իր անձին համար Եսթեր
թագուհիին աղաչէ. վասն զի տե-
սաւ որ՝ իր վրայ չարիքը հասած է
թագաւորէն։
8 Ու թագաւորը երբոր պալատին
պարտէզէն կոչունքին սենեակը
դարձաւ, Համան՝ Եսթերին եղած

† Եբր. խմելու
ա Գլ. Ե. 6.
բ Գլ. Գ. 9. Դ. 7.

Ն․ք․զՔ․ հրր 510
ֆ Գլ․ա․6։
ք Յոբ․ Թ․ 24։
ի Գլ․ա․10։
ղ Գլ․ե․14։ Սաղ․է․16։ Առակ․ժա․ 5, 6։
* Եբր․ խօ- սող
ի Դան․ զ․ 24։ Սաղ․ լէ․35, 36։

դբազմոցին վրայ ինկած էր․ ու
թագաւորը ըսաւ․ Միթէ իմ
տանս մէջ իմ քովս՝ թագուհի՞ն
ալ պիտի բռնադատէ․ աս խօսքը
թագաւորին բերնէն ելածին պէս՝
9 ք Համանին երեսը ծածկեցին ։ Ան
ատենը ի Արբոնա անունով ներքի-
ներուն մէկը՝ թագաւորին առջեւը
ըսաւ․ Ահա ղան յիսուն կանգուն
բարձր փայտը, որ Համան՝ թա-
գաւորին բարերարութիւն *ընող
Մուրթքէին համար պատրաստեց ,
Համանին տանը մէջ կը կենայ ։
Ու թագաւորը ըսաւ․ Զանիկայ
10 անոր վրայ կախեցէ՛ք ։ Եւ ի Հա-
մանը՝ Մուրթքէին համար պատ-
րաստած փայտին վրայ կախեցին ։
Ան ատենը թագաւորին բարկու-
թիւնը իջաւ ։

## ԳԼ․ Ը

1 Մուրթքէ կը յառաջանայ ։ 3 Եսթեր կը խնդրէ որ Համանին գրած նամակները խափանուին ։ 7 Ասուերոս թոյլտուութիւն կը շնորհէ Հրէաներուն՝ որ իրենց անձերը պաշտպանեն ։ 15 Մուրթքէին պատիւը, ու Հրէից ուրախութիւնը ։

ա Գլ․բ․7։
բ Գլ․գ․10։
գ Գլ․դ․11։ ե․2։
դ Գլ․է․4։ Ծնեմ․ բ․ 3։

1 Ան օրը Ասուերոս թագաւորը՝
Հրէից թշնամիին Համանին
տունը Եսթեր թագուհիին պար-
գեւեց․ ու Մուրթքէ՝ թագաւորին
առջեւը եկաւ․ վասն զի Եսթեր՝
ա իրեն ինչ ազգական ըլլալը յայտներ էր թէ անի-
2 կայ իրեն ինչ ազգական էր ։ Եւ
թագաւորը առաւ բ իր մատանին՝
որ Համանէն հաներ էր, ու զանի-
կայ Մուրթքէին տուաւ, ու Ես-
թեր՝ Համանին տանը վրայ դրաւ
Մուրթքէն ։
3 Ու Եսթեր նորէն թագաւորին
առջեւը խօսեցաւ, ու անոր ոտքերը
ինկաւ, և լալով անոր աղաչեց որ
Ագագացի Համանին չարութիւնը՝
ու Հրէից դէմ անոր հնարած հնար-
4 քը խափանէ ։ Եւ գ թագաւորը՝
ոսկի գաւազանը Եսթերին երկըն-
ցուց․ ու Եսթեր ելաւ, ու թա-
5 գաւորին առջեւը կայնեցաւ, Ու
ըսաւ․ Թէ որ թագաւորին հաճոյ
կ՚երեւնայ, ու ես քու առջեւդ շը-
նորհք գտայ, ու թէ որ աս բանը
թագաւորին առջեւը ուղիղ կ՚երեւ-
նայ, ու ես քու աչքերուդ հաճոյ
եմ, թող գրուի որ՝ Ագագացի
Ամադաթային որդւոյն Համանին
հնարքը՝ այսինքն թագաւորին բոլոր
գաւառներուն մէջը եղող Հրէանե-
րը կորսընցընելու համար անոր
դրած հրովարտակները խափա-
6 նուին ։ Վասն զի դ իմ ժողովուր-
դիս վրայ գալու չարիքը ի՞նչպէս
կրնամ տեսնել․ իմ ազգականնե-
րուս՝ կորուստը ի՞նչպէս կրնամ
տեսնել ։

7 Եւ Ասուերոս թագաւորը Եսթեր
թագուհիին ու Հրէայ Մուրթքէին
ըսաւ․ Ահա ե Համանին տունը Ես-
թերին պարգեւեցի․ ու զանիկայ
փայտի վրայ կախեցին՝ Հրէից վրայ
8 ձեռք երկընցընելուն համար ։ Եւ
դուք Հրէից համար՝ ձեզի հաճոյ
երեւցածը՝ թագաւորին անունովը
գրեցէ՛ք, ու թագաւորին մատնիո-
վը կնքեցէ՛ք․ վասն զի թագաւորին
անունովը գրուած՝ ու թագաւորին
մատնիովը կնքուած հրովարտակը
ղ չխափանուիր ։
9 Եւ ան ատենը՝ երրորդ ամսուն՝
այսինքն Սիվան ամսուն քսանուի-
րեքերորդ օրը՝ է թագաւորին գրա-
գիրները կանչուեցան, ու Հրէա-
ներուն, ու ը Հնդկաստանէն մինչեւ
Եթէովպիա եղող գաւառներուն՝
հարիւր քսանուեօթը գաւառին
նախարարներուն, և կուսակալնե-
րուն, ու իշխաններուն, թ ամէն
գաւառին իր գրովը, ու ամէն ազ-
գին իր լեզուովը, ու Հրէաներուն՝
իրենց գրովը ու լեզուովը գրուե-
ցաւ, Մուրթքէին բոլոր հրամա-
10 յածին պէս ։ ժ Եւ Ասուերոս թա-
գաւորին անունովը գրեց, ու թա-
գաւորին մատնիովը կնքեց․ և ձիե-
րու, նժոյգներու, ու մատակ ձիե-
րու քուռակ ջորիներու վրայ հե-
ծած սուրհանդակներով՝ հրովար-
11 տակներ խրկեց, Որոնցմով թա-
գաւորը՝ ամէն քաղաքներու Հը-
րէաներուն հրաման տուաւ որ
ժողվուին, ու իրենց կեանքը
պաշտպանեն ; և իրենց վրայ յար-
ձակող ազգին ու գաւառին բո-
լոր մարդիկները, տղաքները ու
կնիկները կոտորեն, մեռցընեն ու
կորսընցընեն ; և ի անոնց ունե-
12 ցածը յափշտակեն ՛Մէկ օրուան
մէջ՝ Ասուերոս թագաւորին բոլոր
գաւառներուն մէջը, երկոտասա-
ներորդ ամսուն՝ այսինքն Ադար
ամսուն երեքտասաներորդ օրը ։
13 ի Հրովարտակին պատուէրը աս էր՝
որ հրամանը ամէն մէկ գաւառին
մէջը հրատարակուի ; ու ամէն ժո-
ղովուրդներուն բացատրուի, որ
Հրէաները նոյն օրը իրենց թշնամի-
ներէն վրէժ առնելու պատրաստ
14 ըլլան ։ Սուրհանդակները նժոյգ-
ներու ու ջորիներու վրայ հեծան,
ու թագաւորին հրամանէն ստի-
պուելով՝ արտորացին ճամբայ ել-
լելու․ ու հրովարտակը Շուշան
մայրաքաղաքին մէջը հրատարա-
կուեցաւ ։
15 Եւ Մուրթքէ ելաւ թագաւորին
առջեւէն՝ կապուտակ ու ճերմակ
բեհեզէ թագաւորական զգեստով
և ոսկիէ մեծ թագով, ու բեհե-

Ն․ք․զՔ․ հրր 510
ե Հմր 1։ Առակ․ ժգ․ 22։
ղ Տեսգլ․ա․ 19։ Դան․ զ․8, 12, 15։
է Գլ․գ․12։
ը Գլ․ա․1։
թ Գլ․ա․22։ գ․12։
ժ գ Թագ․ իա․8։ Գլ․ գ․12, 13։
ի Տեսգլ․Թ․ 10, 15, 16։
՛ Գլ․գ․13։ Թ․1։
ի Գլ․գ․14, 15։

Ն․ Ք․ ԳՔ․
Եբր 510

ծ Տես գլ․ գ․ 15 ։ Առակ․ իթ․ 2 ։
կ Սաղ․ ղէ․ 11 ։
հ ա Թագ․ իե․ 8 ։ Գլ․ թ․ 19, 22 ։
յ Սաղ․ ժբ․ 43 ։
ղ Ծն․ լե․ 5 ։ Ել․ ժե․ 16 ։ բ Օր․ բ․ 25 ։ ժա․ 25 ։ Գլ․ թ․ 2 ։

ձերմակ ու ծիրանի պատմուճանով․
և ծ Շուշան քաղաքը ուրախացաւ
16 ու ցնծութիւն ըրաւ ։ Հրէաները՝
կ լոյս, ուրախութիւն, ցնծութիւն
17 ու պատիւ ունեցան ։ Եւ ամէն
գաւառներու մէջ՝ ու ամէն քա-
ղաքներու մէջ՝ ուր որ թագաւո-
րին հրամանը ու հրովարտակը կը
հասնէր, Հրէաները ուրախութիւն
ու ցնծութիւն ունեցան, և կո-
չունքի հ ու տօնախմբութեան օր
ըրին․ ու երկրին ժողովուրդներէն
շատերը յ Հրեայ եղան․ վասն զի
ղ անոնց վրայ Հրէաներուն վախը
ինկաւ ։

ԳԼ․ Թ

1 Կառավարիչները Մուրթքէէն վախնալնուն համար՝ Հրէաներուն ձեռնտու կ'ըլլան․ անոնք ալ իրենց թշնամիները, նաև Համանին տասը տղաքները կը մեռցընեն ։ 12 Ասուերոս՝ Եսթերին աղաչանքովը հրաման կը շնորհէ՝ որ մէկ օր մըն ալ կոտորած ընեն, ու Համանին տղաքները կախեն ։ 20 Փուրիմին երկու օրերը տօն կը սահմանուին ։

Եբր 509
ա Գլ․ ը․ 12 ։
բ Գլ․ գ․ 13 ։
գ բ Թագ․ իբ․ 41 ։
դ Գլ․ ը․ 11 ։ Հմր 16 ։
ե Սաղ․ հա․ 13, 24 ։
զ Գլ․ ը․ 17 ։
է բ Թագ․ գ․ 1 ։ ա Մն․ ժա․ 9 ։ Առակ․ դ․ 18 ։

1 Եւ ա երկոտասաներորդ ամսուն՝
այսինքն Ադար ամսուն երեք-
տասաներորդ օրը՝ բ թագաւորին
խօսքը ու հրամանը կատարուելու
ժամանակը հասնելով՝ այն օրը որ
Հրէից թշնամիները կը յուսային
անոնց վրայ տիրել, ներհակը եղա-
տահեցաւ․ վասն զի Հրէաները
գ իրենց թշնամիներուն վրայ տի-
2 րեցին․ Ասուերոս թագաւորին
բոլոր գաւառներուն մէջ Հրէա-
ները իրենց քաղաքներուն մէջը
դ ժողվուեցան, որ ե իրենց չարիք
ուզողներուն վրայ ձեռք երկընցը-
նեն․ ու ամենևին մէկը չկրցաւ
անոնց դէմ կենալ․ վասն զի զ ա-
նոնց վախը ամէն ժողովուրդնե-
3 րուն վրայ ինկեր էր ։ Եւ գաւառ-
ներուն բոլոր իշխանները, ու
նախարարները, և կուսակալնե-
րը, ու թագաւորին գործակալնե-
րը՝ Հրէաներուն ձեռնտու էին․
ինչու որ անոնց վրայ Մուրթքէին
4 վախը ինկեր էր ։ Քանզի Մուրթ-
քէ՝ թագաւորին պալատին մէջը
մեծ էր, ու անոր համբաւը բոլոր
գաւառները տարածուեր էր․ վասն
զի Մուրթքէ է երթալով կը մեծ-
5 նար ։ Եւ Հրէաները իրենց բոլոր
թշնամիները սրով մեռցուցին, ու
խիստ մեծ կոտորած ըրին, ու զի-
րենք ատողներուն՝ իրենց ուզածին
6 պէս ըրին ։ Եւ Հրէաները Շու-
շան մայրաքաղաքին մէջ հինգ հա-
րիւր մարդ մեռցընելով կորսնցու-
7 ցին․ Նաև Փարսանդաթան, Դաղ-
8 փոնը, Ասփաթան, Փորաթան, Ա-
9 դալիան, Արիդաթան, Փարմաս-
թան, Արիսային, Արիդային ու

10 Վայեզաթան, Հրէից թշնամին՝
Ամադաթայի որդւոյն ը Համանին
տասը տղաքները մեռցուցին․
ր բայց աւարին ձեռք չերկընցու-
11 ցին ։ Այն օրը Շուշան մայրաքա-
ղաքին մէջ մեռցուածներուն հա-
շիւը թագաւորին առջևը եկաւ ։
12 Եւ թագաւորը Եսթեր թագու-
հիին ըսաւ․ Հրէաները Շուշան
մայրաքաղաքին մէջ հինգ հարիւր
մարդ, ու Համանին տասը տղաքը
մեռցընելով կորսնցուցին․ թա-
գաւորին մէկալ գաւառներուն մէջը
ինչե՞ր ըրած պիտի ըլլան․ հիմա
ծ ի՞նչ է խնդիրքդ․ պիտի տրուի
քեզի․ ալ ի՞նչ աղաչանք ունիս․
13 պիտի կատարուի ։ Ու Եսթեր ը-
սաւ․ Թէ որ թագաւորը կը հա-
ճի, Շուշանի մէջ եղող Հրէա-
ներուն հրաման տրուի, որ վաղն
ալ ե այս օրուան հրովարտակին հա-
մեմատ ընեն, ու Համանին տասը
տղաքը ւ փայտի վրայ կախուին ։
14 Եւ թագաւորը ըսաւ որ այնպէս
ըլլայ․ ու Շուշանի մէջ հրամանը
հրատարակուեցաւ, ու Համանին
15 տասը տղաքը կախուեցան ։ Եւ
Շուշանի մէջ եղող Հրէաները՝ Ա-
դար ամսուն չորեքտասաներորդ
օրն ալ ի ժողվուեցան, ու Շուշանի
մէջ իրեք հարիւր մարդ՝ մեռցու-
ցին․ ծ բայց աւարին ձեռք չեր-
16 կընցուցին ։ Եւ թագաւորին գա-
ւառներուն մէջը եղող միւս Հրէա-
ները կ ժողվուեցան, ու իրենց
կեանքը պաշտպանեցին, և իրենց
թշնամիներէն հանգստացան, ու
զիրենք ատողներէն եօթանասուն-
ուհինգ հազար մարդ մեռցուցին․
հ բայց աւարին ձեռք չերկընցու-
17 ցին ։ Ասիկայ Ադար ամսուն ե-
րեքտասաներորդ օրը եղաւ, և ա-
նոր չորեքտասաներորդ օրը հան-
գըստացան, ու զանիկայ կոչունքի
18 և ուրախութեան օր ըրին ։ Իսկ
Շուշանի մէջ եղող Հրէաները՝ այն
ամսուն յ երեքտասաներորդ օրը, ու
չորեքտասաներորդ օրը ժողվուե-
ցան․ ու անոր տասնուհինգերորդ
օրը հանգստացան, և զանիկայ կո-
չունքի ու ուրախութեան օր ըրին ։
19 Աս պատճառով գեղացի Հրէանե-
րը՝ անպարիսպ գիւղաքաղաքներու
մէջ բնակողները՝ Ադար ամսուն
չորեքտասաներորդ օրը՝ ղ ուրա-
խութեան, կոչունքի ց ու տօնա-
խմբութեան օր կ'ընեն, ու ա օրը
ս ամէն մարդ իր բարեկամին ընծա-
ներ կը խրկէ ։
20 Եւ Մուրթքէ աս բաները գրեց, ու
Ասուերոս թագաւորին ամէն գա-
ւառներուն մէջը՝ մօտ ու հեռու
եղող Հրէաներուն թուղթեր խրր-

Ն․ Ք․ ԳՔ․
Եբր 509

ը Գլ․ ե․ 11 ։ Յոբ․ ժը․ 19 ։ իէ․ 13, 14, 15 ։ Սաղ․ իա․ 10 ։
ր Տես գլ․ ը․ 11 ։
ծ Գլ․ ե․ 6 ։ է․ 2 ։
ե Գլ․ ը․ 11 ։
ւ բ Թագ․ իա․ 6, 9 ։
ի Հմր 2 ։ Գլ․ ը․ 11 ։
ծ Հմր 10 ։
կ Հմր 2 ։ Գլ․ ը․ 11 ։
հ Տես Գլ․ ը․ 11 ։
509
յ Հմր 11, 15 ։
Նեեմ․ ը․ 10, 12 ։

Ն. Ք. ԴՓ. Իբր 509

21 կեց, Պատուիրելով անոնց՝ որ
ամէն տարի Ադար ամսուն չորեքտասաներորդ օրը, ու անոր հնգետասաներորդ օրը տօն կատարեն,
22 (Այն օրերուն համեմատ՝ որ Հրէաները իրենց թշնամիներէն հանգստացան, եւ այն ամսուն համեմատ՝ որ [ա]անոնց տրտմութիւնը ուրախութեան, ու անոնց սուգը բարի օրուան դարձաւ,) զանոնք կոչունքի ու ուրախութեան օրեր ընեն; որոնց մէջ [բ]ամէն մարդ իր բարեկամին ընծաներ, ու աղքատ-
23 ներուն պարգեւներ խրկեն: Եւ Հրէաները խօսք տուին որ իրենց սկսածին պէս՝ ու Մուրթքէին ի-
24 րենց գրածին պէս ընեն: Վասն զի բոլոր Հրէաներուն թշնամին Ագագացի Ամադաթայի որդին Համանը՝ [գ]Հրէաները կորսնցնել խորհեցաւ ու զանոնք բնաջինջ ընելու ու կորսնցնելու համար՝ Փուր այսինքն վիճակ ձգեց:
25 Բայց [դ]երբոր Եսթեր՝ թագաւորին առջեւը գնաց, նամակներով հրովարտակով հրամայեց՝ որ Հրէից դէմ Համանին ըրած չար հնարքը [ե]անոր գլուխը դառնայ, եւ զանիկայ ու անոր տղաքը փայտի վրայ կախեն:
26 Անոր համար այս օրերը՝ *Փուր անունէն՝ Փուրիմ ըսուեցան. Ու այս պատճառաւ [զ]այս թուղթին խօսքերուն համար, ու անոնց տեսած ու անոնց պատահած բաներուն
27 համար՝ Հրէաները որոշեցին, ու իրենց՝ եւ իրենց սերունդին, ու բոլոր [է]իրենց հետ միացողներուն կանոն դրին, որ ամէն տարի այն երկու օրը՝ իրենց գրուածին ու ատենին համեմատ՝ անպատճառ տօն պա-
28 հեն. Եւ այս օրերը՝ ամէն դարերու մէջ, ամէն ազգատոհմի մէջ, ամէն գաւառի մէջ, ու ամէն քաղաքի մէջ յիշուին ու պահուին. եւ այս Փուրիմի օրերը Հրէից մէջէն պակաս չըլլան, ու անոնց յիշատակը իրենց սերունդէն չվերնայ:
29 Եւ [ը]Աբիքէլին աղջիկը Եսթեր թագուհին ու Հրեայ Մուրթքէն՝ Փուրիմը հաստատելու համար՝ այս [թ]երկրորդ նամակը կատարեալ իշ-
30 խանութեամբ գրեցին. Եւ Ասուերոսին թագաւորութեանը [ժ]հարիւր քսանուեօթը գաւառներուն մէջը եղող բոլոր Հրէաներուն՝ խաղաղութեան ու ճշմարտութեան խօսքերով թուղթեր խրկե-
31 ցին, Որ այս Փուրիմի օրերը իրենց որոշ ժամանակին մէջը հաստատեն, ինչպէս որ Մուրթքէ Հրեան ու Եսթեր թագուհին անոնց պատուիրեցին, ու ինչպէս որ Հրէաները իրենց համար ու իրենց սերունդին համար [ի]ծոմապահութեան ու աղօթից վերաբերեալ բաները հաս-
32 տատեցին: Այսպէս Եսթերին հրամանը՝ այս Փուրիմին պահպանութիւնը հաստատեց, ու գրքի մէջ գրուեցաւ:

Margin references (ch. 9): [ա] Սաղ. Լ. 11: [բ] Հմր 19; Նեեմ. Ը. 10: [գ] Գլ. Գ. 6, 7: [դ] Հմր 13, 14; Գլ. Է. 5, Ժ; Ը. 3, Ժ: [ե] Գլ. Է. 10; Սաղ. Է. 16: * Այ՝ վիճակ: [զ] Հմր 20: [է] Գլ. Ը. 17; Ես. ԾԶ. 3, 6; Զաք. Բ. 11: [ը] Գլ. Բ. 15: [թ] Տես Գլ. Ը. 10; Հմր 20: [ժ] Գլ. Ա. 1: [ի] Գլ. Դ. 3, 16:

## ԳԼ. Ժ

1 Ասուերոսին մեծութիւնը: 3 Մուրթքէին յառաջանալը:

Իբր 495

1 Եւ Ասուերոս թագաւորը՝ ցամաք
երկիրներու վրայ, ու [ա]ծովու
2 կղզիներուն վրայ հարկ ձգեց: Եւ
անոր քաջութեանը բոլոր գործքերը, ու զօրութիւնը, եւ Մուրթքէին մեծութեանը փառքը՝ [բ]որով թագաւորը զանիկայ մեծցուց, ահա Մարաց ու Պարսից թագաւորներուն ժամանակագրութեանը
3 գրքին մէջ գրուած է: Վասն զի
Մուրթքէ Հրեան՝ [գ]Ասուերոս թագաւորին երկրորդն էր, ու Հրէաներուն մէջը մեծ՝ ու իր եղբայրներուն բազմութեանը հաճոյ էր. [դ]իր ազգին աղէկութիւնը կը փնտռէր, եւ իր բոլոր սերունդին խաղաղութեանը վերաբերեալ բաները կը խօսէր:

Margin references (ch. 10): [ա] Ծն. Ժ. 5; Սաղ. ՀԲ. 10; Ես. ԻԴ. 15: [բ] Գլ. Ը. 15; Թ. 4: [գ] Ծն. ԽԱ. 40; Բ Մն. ԻԸ. 7: [դ] Նեեմ. Բ. 10; Սաղ. ՃԻԲ. 8, 9:

# ԳԻՐՔ ՅՈԲԱՅ

## ԳԼՈՒԽ Ա

1 Յոբին բարեպաշտութիւնը, հարստութիւնը, ու իր որդւոցը համար ունեցած հոգը ։ 6 Սատանան՝ Աստուծոյ առջեւը կը ներկայանայ, ու Յոբին համար չարախօսութիւն ընելով՝ զանիկայ փորձելու հրաման կ'առնէ ։ 13 Յոբ իր ստացուածոցը ու իր որդւոցը կորուստը լսելով՝ իր ազատութեանը մէջ Տէրը կ'օրհնէ ։

1 * Ուս երկրին մէջ ⁻ Յոբ անունով մարդ մը կար. ու ան
մարդը ᵇ կատարեալ ու արդար և
ᶜ աստուածավախ էր, ու չարու-
2 թենէ ետ կը քաշուէր ։ Եւ անոր
եօթը տղայ ու իրեք աղջիկ ծնաւ ։
3 Ու անոր ստացուածքը՝ եօթը հա-
զար ոչխար, ու իրեք հազար ուղտ,
և հինգ հարիւր զոյգ եզ, ու հինգ
հարիւր մատակ էշ էր. ու խիստ
շատ ծառաներ ունէր. և ան մար-
դը բոլոր արեւելցիներէն մեծ էր ։
4 Ու անոր տղաքը կ'երթային, ու
ամէն մէկը իր օրը՝ տուներնին հաց-
կերոյթ կ'ընէին, և մարդ խրկելով՝
իրեք քոյրերնին կը հրաւիրէին, որ
5 իրենց հետ ուտեն ու խմեն ։ Ու
երբոր հացկերոյթին օրերը կը լմըն-
նար, Յոբ † կանչել կու տար՝՝ զա-
նոնք ու կը սրբէր. և առտուանց
կ'ելլէր՝ անոնց ամենուն թուովը
ᵈ ողջակէզներ կը մատուցանէր. ո-
րովհետև կ'ըսէր Յոբ. Կարելի է որ
տղաքս մեղք գործեցին, ու սրտեր-
նուն մէջ ᵉ Աստուծոյ հայհոյեցին.
միշտ այսպէս կ'ընէր Յոբ ։
6 Արդ՝ ᶠ մէկ օր մը ᵍ Աստուծոյ որ-
դիքը գացին Տէրոջը առջեւը կայ-
նելու. ու ʰ Սատանան ալ գնաց
7 անոնց մէջը. Եւ Տէրը ըսաւ Սա-
տանային. Ո՞ւսկից կու գաս. ու
Սատանան պատասխան տուաւ Տէ-
րոջը՝ ու ըսաւ. ⁱ Երկրի վրայ շըր-
ջելէն ու անոր մէջը պտըտելէն ։
8 Եւ Տէրը ըսաւ Սատանային. ʲ Իմ
Յոբ ծառայիս աղէկ ուշադրու-
թիւն ըրի՞ր, որ երկրի վրայ անոր
պէս ᵏ կատարեալ և արդար, աս-
տուածավախ ու չարութենէ ետ
9 քաշուող մարդ չկայ ։ Ու Սատա-
նան պատասխան տուաւ Տէրոջը՝
ու ըսաւ. Միթէ Յոբ ‡ ձրի՞ կը
10 պաշտէ զԱստուած՝՝. ˡ Չէ՞ որ
դուն անոր՝ ու անոր տանը՝ և ա-
նոր ամէն ունեցածներուն բոլոր-
տիքը ցանկով պատեցիր, ᵐ անոր
ձեռացը գործքերը օրհնեցիր, ու
անոր ստացուածքը երկրի վրայ
11 շատցաւ ։ ⁿ Բայց հիմա ձեռքդ
երկընցո՛ւր, ու անոր ամէն ունե-
ցածին դպչէ՛, ու պիտի տեսնես թէ
ինչպէս ° քեզի դէմ պիտի հայհոյէ ։
12 Եւ Տէրը ըսաւ Սատանային. Ահա
անոր ամէն ունեցածը քու ᵖ ձեռքդ
է ու տամ. միայն թէ իրեն վրայ
ձեռք չերկընցընես ։ Ան ժամա-
նակը Սատանան Տէրոջը առջեւէն
ելաւ ։
13 Ու եղաւ որ օր մը ᵠ անոր տղաքը
ու աղջիկները՝ իրենց մեծ եղբօրը
տանը մէջ կ'ուտէին ու գինի կը
14 խմէին ։ Ու մէկ պատգամաբեր մը
եկաւ Յոբին՝ ու ըսաւ. Երբոր եզ-
ները կը հերկէին, ու մատակ էշե-
րը անոնց քովը կ'արածուէին,
15 Սաբայեցիք յարձակեցան՝ ու զա-
նոնք առին, ու ծառաները սուրի
բերնէ անցուցին. և միայն ես ա-
զատեցայ, որ ելլամ որ քեզի պատ-
16 մեմ ։ Երբոր անիկայ տակաւին կը
խօսէր, ուրիշ մէկն ալ եկաւ ու
ըսաւ. Երկինքէն Աստուծոյ կրակը
իջաւ, ու հօտերը ու ծառաները
այրեց, ու զանոնք սպառեց. և
միայն ես ազատեցայ, որ ելլամ որ
17 քեզի պատմեմ ։ Երբոր անիկայ
տակաւին կը խօսէր, ուրիշ մէկն
ալ եկաւ ու ըսաւ. Քաղդէացիք
իրեք գունդի բաժնուած՝ ուղտե-
րուն վրայ յարձակեցան, և զա-
նոնք առին, ու ծառաները սուրի
բերնէ անցուցին. և միայն ես ա-
զատեցայ, որ ելլամ որ քեզի պատ-
18 մեմ ։ Երբոր անիկայ տակաւին
կը խօսէր, ուրիշ մէկն ալ եկաւ ու
ըսաւ. Որ ատեն ʳ տղաքդ ու աղ-
ջիկներդ՝ իրենց մեծ եղբօրը տանը
մէջ կ'ուտէին ու գինի կը խմէին,
19 Ահա՛ անապատին անդիի կողմէն
մեծ հով մը եկաւ, ու տանը չորս
կողմը ուժգին զարկաւ, որ տղոցը
վրան փլաւ, ու անոնք մեռան. և
միայն ես ազատեցայ, որ ելլամ որ
քեզի պատմեմ ։
20 Ան ատենը Յոբ ելաւ, ˢ իր պատ-
մուճանը պատռեց, և գլխուն մա-
զերը կտրեց, ու ᵗ գետինը իյնալով՝

Ն. Ք. ԱՌ. իբր 1520

* Տես Ծն. իբ. 20, 21 ։ Մովսէս՝ կը կարծուի թէ՝ գրեց Յոբայ գիրքը երբոր Մադիանացւոց մէջն էր՝ իբր 1520 նախ քան զՔրիստոս ։
⁻ Եզեկ. ժդ. 14 ։ Յակ. ե. 11 ։
ᵇ Ծն. զ. 9 ։ ժէ. 1 ։ Գլ. 2, 3 ։
ᶜ Առակ. ը. 13 ։ ժզ. 6 ։
† Եբր. կը խրկէր
ᵈ Ծն. ը. 20 ։ Գլ. խբ. 8 ։
ᵉ Գ Թագ. իա. 10, 13 ։
ᶠ Գլ. բ. 1 ։
ᵍ Գ Թագ. իբ. 19 ։ Գլ. լը. 7 ։
ʰ Ա Մն. իա. 1 ։ Յայտ. ժբ. 9, 10 ։
ⁱ Գլ. բ. 2 ։ Մատ. ժբ. 43 ։ Ա Պետ. ե. 8 ։
ʲ Գլ. բ. 3 ։
ᵏ Հմր 1 ։
‡ Եբր. ձրի՞ կը վախնայ Աստուծմէ ։
ˡ Սաղ. լդ. 7 ։ Եսայ. ե. 2 ։

Ն. Ք. ԱՌ. իբր 1520

ᵐ Սաղ. ճիը. 1, 2 ։ Առակ. ժ. 22 ։
ⁿ Գլ. բ. 5 ։ ժթ. 21 ։
° Եսա. ը. 21 ։ Մաղ. գ. 13, 14 ։
ᵖ Ծն. ժզ. 6 ։
ᵠ Ժող. թ. 12 ։
ʳ Հմր 4. 13 ։
ˢ Ծն. լէ. 29 ։ Եզր. թ. 3 ։
ᵗ Ա Պետ. ե. 6 ։

Ն · Ք · ԴՔ · ԻՐԸ 1520

յ Սաղ · խթ · 17 · Ժող · ե · 15 · ա Տիմ · զ · 7 ·
ն Ժող · ե · 19 · Յակ · ա · 17 ·
ւ Մատ · ի · 15 ·
ո Եփե · ե · 20 · աթես · ե · 18 ·
չ Գլ · ր · 10 ·

21 երկրպագութիւն ըրաւ . Ու ըսաւ .
յ Մօրս արգանդէն մերկ ելայ , ու
հոն մերկ պիտի դառնամ . Տէրը
ն տուաւ , ու Տէրը ւառաւ . ո օրհ-
22 նեալ ըլլայ Տէրոջը անունը ։ չ Աս
ամենուն մէջ Յոբ չմեղանչեց , ու
Աստուծոյ անզգամութիւն չը-
տուաւ ։

## ԳԼ · Բ

1 Սատանայ նորէն Աստուծոյ առջեւ ներկայանալով՝ երկրորդ անգամ հրաման կ'առնէ որ Յոբը փորձէ ։ 7 Չարաչար պալարներով զանիկայ կը զարնէ ։ 9 Յոբ իր կնիկը կը յանդիմանէ , երբոր կը տեսնէ որ անիկայ եկեր է զինքը գրգռելու որ զԱստուած անիծէ ։ 11 Յոբին իրեք բարեկամները լռութեամբ ցաւակից կ'ըլլան անոր ։

1 Ու դարձեալ օր մը Աստուծոյ որդի-
քը դացին Տէրոջը առջեւ կայ-
նելու , ու Սատանան ալ գնաց ա-
նոնց մէջը՝ Տէրոջը առջեւ կայնե-
2 լու ։ Եւ Տէրը ըսաւ Սատանային .
Ո՞ւսկից կու գաս . ու բ Սատանան
պատասխան տուաւ Տէրոջը՝ ու
ըսաւ . Երկրի վրայ շրջելէն ու
3 անոր մէջը պտըտելէն ։ Եւ Տէրը
Սատանային ըսաւ . Իմ Յոբ ծա-
ռայիս աղէկ ուշադրութիւն ըրի՞ր .
որ երկրի վրայ անոր պէս ‡ կա-
տարեալ և արդար , աստուածա-
վախ ու չարութենէ ետ քա-
շուող մարդ չկայ . ու անիկայ
տակաւին † իր կատարելութեանը
մէջ հաստատ է . թէև դուն
ուզեցիր զիս համոզել ⊦ որ զա-
նիկայ զուր տեղը կորսնցընեմ .
4 Եւ Սատանան պատասխան տուաւ
ու Տէրոջը ըսաւ . Մորթի տեղ
մորթ՝ նաև մարդս իր բոլոր ստա-
ցուածքը՝ իր կեանքին տեղը կու
5 տայ ։ ւ Բայց հիմա ձեռքդ երկըն-
ցուր , ու անոր ⊦ ոսկորին ու մար-
մինին դպչէ , ու պիտի տեսնես թէ
ինչպէս քեզի դէմ պիտի հայհոյէ ։
6 ը Եւ Տէրը ըսաւ Սատանային . Ահա
անիկայ քու ձեռքդ նա տամ . մի-
այն թէ անոր կեանքը պահէ ։
7 Ու Սատանան ելաւ Տէրոջը առ-
ջեւէն . ու Յոբը ⸢ոտքին թաթէն
մինչև գագաթը գէշ պալարներով
8 զարկաւ ։ Եւ անիկայ խեցիի մը
կտոր առաւ , որ անով քերուի .
ժ ու մոխիրի մէջ նստաւ ։
9 Եւ անոր կնիկը ըսաւ անոր .
ի Դուն տակաւին Լքու կատարելու-
թեանդ մէջ հաստատ կը կենա՞ս .
Աստուծոյ դէմ հայհոյէ ու մեռիր ։
10 Եւ Յոբ ըսաւ անոր . Դուն անըզ-
գամ կնկան մը պէս կը խօսիս .
ի Աստուծոյ ձեռքէն միայն բարիքը
ընդունինք , ու չարիքը չընդու-
նի՞նք ։ ծ Աս ամենուն մէջը Յոբ կ իր
շրթունքներովը չմեղանչեց ։
11 Եւ Յոբին իրեք ʿ բարեկամները՝

– Գլ · ա · 6 ·
բ Գլ · ա · 7 ·
‡ Գլ · ա · 1 · 8 ·
† Գլ · իէ · 5 · 6 ·
⊦ Գլ · թ · 17 ·
ւ Գլ · ա · 11 ·
⊦ Գլ · ժթ · 20 ·
ը Գլ · ա · 12 ·
⸢ Ես · ա · 6 ·
ժ բ Թագ · ժգ · 19 · Գլ · խբ · 6 · Եզեկ · իէ · 30 · Մատ · ժա · 21 ·
ի Գլ · իա · 15 ·
Լ Հմր 3 ·
ի Գլ · ա · 21 · Հռով · ժբ · 12 · Յակ · ե · 10 · 11 ·
ծ Գլ · ա · 22 ·
կ Սաղ · լթ · 1 ·
ʿ Առակ · ժէ · 17 ·

Եղիփազ ⸣ Թեմանացին , Բաղդատ
* Սօքեցին , ու Սոփար Նաամացին՝
երբոր լսեցին անոր գլուխը եկած
աս բոլոր փորձութիւնները , ամէն
մէկը իր տեղէն ելլելով եկան՝ ու
մէկտեղ ժողվուեցան , որ երթան
ւ ցաւակից ըլլան անոր , ու զանի-
12 կայ մխիթարեն ։ Բւ հեռուէն աչ-
քերնին վերցընելով տեսան , բայց չը-
ճանչցան զանիկայ . և ձայներնին
վերցուցին ու լացին . ու ամէն մէ-
կը իր պատմուճանը պատռելով՝
դէպ 'ի երկինքը ⸤ գլուխնին հող
13 ցանեցին ։ Եւ անոր հետ ⸥ եօթը
օր ու եօթը գիշեր գետնի վրայ նըս-
տան . ու մէկը անոր խօսք մը չըը-
րուցեց . քանզի տեսան որ անոր
ցաւը խիստ սաստիկ էր ։

## ԳԼ · Գ

1 Յոբ իր ծննդեան օրը կ'անիծէ ։ 13 Մահուան հանգստութիւնը ։ 20 Յոբ իր նեղութեանը պատճառով՝ իր կեանքէն կը գանգատի ։

1 Անկէ ետև Յոբ իր բերանը բացաւ ,
2 ու իր օրը անիծեց ։ Եւ Յոբ
† խօսեցաւ ու ըսաւ .
3 – Կորսուի՛ ան օրը՝ որ ես ծնայ ,
ու ան գիշերը՝ որ ըսին թէ՝ Արու
զաւակ մը ‡ ծնաւ ։
4 Ան օրը խաւար ըլլայ , ու Աս-
տուած չփնտռէ զանիկայ վերէն ,
ու երբեք լոյս չծագի անոր վրայ ։
5 Խաւարը ու բ մահուան շուքը
‖ իրենց սեպհականնեն՝ զանիկայ .
ամպը ծածկէ զանիկայ . օրուան
մթութիւնը վախցընէ զանիկայ ։
6 Ան գիշերը՝ մառախուղը պաշա-
րէ . անիկայ տարուան օրերուն
§ հետ չմիաւորուի՝ , ու ամիսներուն
մէջ չհամրուի ։
7 Ահա ան գիշերը թող ամայի մը-
նայ , ու անոր մէջ ուրախութեան
ձայն չմտնէ ։
8 Թող անիծեն զանիկայ՝ ÷ օրը ա-
նիծողները , որոնք պատրաստ են
⁑ վիշապը արթընցընելու ։
9 Անոր գիշերուան աստղերը աղօ-
տանան . լոյսին սպասէ , ու չունե-
նայ . ու ⸗ արշալոյսին †† ճառա-
գայթները չտեսնէ .
10 Վասն զի իմ մօրս արգանդին
դռները չգոցեց , ու տառապանքը
աչքերէս չծածկեց ։
11 ⊦ Ինչո՞ւ համար մօրս արգանդէն
չմեռայ , ու որովայնէն ելած իս
պէս չկորսուեցայ ։
12 ւ Ինչո՞ւ ծունկերը ընդունեցին
զիս , ու ինչո՞ւ ստինք տուին ինծի՝
որ ես ծծեմ ։
13 Ինչու որ հիմա պառկած կը
հանգչէի ու կը քնանայի . ան ժա-
մանակը հանգստացած կ'ըլլայի .
14 Իրենց համար ⊦ աւերակներ շինող

Ն · Ք · ԴՔ · ԻՐԸ 1520

⸣ Ծն · լզ · 11 · Երեմ · խթ · 7 ·
* Կամ՝ Սովեցին · տես Ծն · իե · 2 ·
ւ Գլ · իբ · 11 · Հռով · ժբ · 15 ·
⸤ Նեեմ · թ · 1 · Ողբ · բ · 10 · Եզեկ · իէ · 30 ·
⸥ Ծն · ծ · 10 ·

† Եբր · պատասխան տուաւ
– Գլ · ժ · 18 · 19 · Երեմ · ժե · 10 · ի · 14 ·
‡ Եբր · արգանդի մէջ գոյացաւ ։
բ Գլ · ժ · 21 · 22 · ժզ · 16 · իը · 3 · Սաղ · իգ · 4 · խգ · 19 · ձէ · 10 · 14 · Երեմ · ժգ · 16 · Ամով · ե · 8 ·
‖ Կամ՝ պըղծեն
§ Կամ՝ մէջը չուրախանայ ։
÷ Տես Երեմ · թ · 17 · 18 ·
⁑ Եբր · Լևիաթանը
⸗ Գլ · խա · 18 ·
†† Եբր · Թարթիչները
⊦ Գլ · ժ · 18 ·
ւ Ծն · լ · 3 · Ես · կզ · 12 ·
⊦ Գլ · ժե · 28 ·

Ն. Ք. գՔ. իբր 1520

երկրի թագաւորներուն ու խորհրդականներուն հետ,
15 Կամ ոսկի ունեցող իշխաններուն հետ՝ որոնք տուներնին արծաթով կը լեցնեն.
ըՍաղ. ծը. Տ։
16 Կամ թէ ըգաղտուկ վիժածի մը պէս կ'ոչնչանայի, ան երախաներուն պէս՝ որոնք երբէք լոյս չտեսան։
17 Հոն չարերը խռովութենէն կը դադարին. և հոն ուժէ ինկածները կը հանգստանան։
18 Նմանապէս բանտարկեալները հոն կը հանգչին, ու չեն լսեր բհարկապահանջին ձայնը։
բ Տե. գլ. լթ. 7։
19 Պզտիկը ու մեծը հոն են. ծառան ալ իր տիրոջմէն ազատ է։
20 Ինչո՞ւ համար թշուառութեան մէջ եղողին լոյս՝ ու էդառնահոգիներուն կեանք տրուի,
դԵրեմ. ի. 18։ էաթագ. ա. 10։ դթագ. դ. 21։ Առակ. լա. 6։
21 Որոնք ըմահուան կը սպասեն, ու անիկայ չգար, ու էպահուած գանձերէն աւելի զանիկայ կը փնտռեն.
ըՑայտ. թ. 6։ էԱռակ. բ. 4։
22 Գերեզմանը գտած ժամանակնին՝ խիստ ուրախ կ'ըլլան ու կը ցնծան.
23 Անանկ մարդու մը՝ որուն ճամբան գոցուած է, ծու Աստուած արգիլեր է զանիկայ ամէն կողմէն.
ծԳլ. ժթ. 8։ Ողբ. գ. 7։
24 Որովհետև կերակուր ուտելէս առաջ՝ իմ հեծութիւնս կու գայ, ու իմ աղաղակներս ջուրերու պէս կը հոսին։
25 Վասն զի ինչ բանէ որ շատ կը վախնայի՝ ան ինծի հանդիպեցաւ, և ինչ բանէ որ երկիւղ ունէի, ան ինծի հասաւ։
26 Ո՛չ խաղաղութիւն ունիմ, ո՛չ հանգստութիւն, և ո՛չ հանդարտութիւն. բայց թշուառութիւնը կու գայ։

ԳԼ. Դ

1 Եղիփազ կը յանդիմանէ Յոբը՝ իբրև ամբարիշտ մէկ մը։ 7 Կ'իմացընէ թէ Աստուծոյ դատաստանները արդարներուն համար չէ հապա չարերուն համար։ 12 Կը պատմէ իր զարհուրելի տեսիլքը, որով ստեղծուածներուն հպարտութիւնը կը յանդիմանուէր։

1 Ա՛ն ատենը Եղիփազ Թեմանացին՝ պատասխան տուաւ ու ըսաւ.
2 Պիտի դժուարի՞ս արդեօք, թէ որ սկսինք քեզի խօսիլ. բայց ո՞վ կրնայ զինքը զսպել որ չխօսի.
3 Ահա դուն շատերուն խրատ տուիր, ու ատկար ձեռքերը զօրացուցիր։
աԵս. լե. 3։
4 Քու խօսքերդ սահելու վրայ եղողը հաստատեցին. ու դուն բտըկարացած ծունկերը գկազդուրեցիր։
բԵբր. ժբ. 12։ գԵս. լե. 3։
5 Բայց հիմա ասիկա քեզի պատահեցաւ, ու դժուարեցար.
քեզի դպաւ, ու բոլորովին շփոթեցար։
6 Միթէ դաստուածպաշտութիւնդ քու յոյսդ չէ՞, ու ճամբաներուդ ուղղութիւնը՝ քու ակնկալութիւնդ։
դԵբր. երկի. դ. տես Գլ. ա. 1։
7 Ա՛ղէ մի՛տքդ բեր, եո՞ր անմեղը կորսուեցաւ, և ո՞ւր տեղ արդարները բնաջինջ եղան։
եԱռակ. գ. 26։ էՍաղ. լէ. 25։
8 Ինչպէս որ տեսայ, զանօրէնութիւն հերկողները, և անիրաւութիւն ցանողները՝ նոյնը կը հնձեն.
զՍաղ. է. 14։ Առակ. իբ. Տ։ Ովս. ժ. 13։ Գաղ. զ. 7, Տ։
9 Աստուծոյ շունչէն կը կորսուին, ու անոր էռնգացը հովէն բնաջինջ կ'ըլլան.
էԵս. լ. 33։ Տես Եւ. ժե. 8։ Գլ. ա. 19։ ժե. 30։ Ես. ժա. 4։ բ Թես. բ. Տ։
10 Առիւծին մռնչիւնը՝ և մեծ առիւծին ձայնը. ու ըկորիւններուն ակռաները կը կոտրտուին։
ըՍաղ. ծը. 6։
11 Բառիւծը առանց որսի կը կորսուի, ու մատակ առիւծին կորիւնները կը ցրուին։
բՍաղ. լդ. 10։
12 Եւ ինծի գաղտուկ կերպով խօսք մը ըսուեցաւ, ու անոր շշունչը ականջս հասաւ։
13 ժԳիշերուան տեսիլքներուն մէջ, խորհուրդներուն ատենը՝ երբոր խորունկ քուն մը մարդոց վրայ կ'իջնէ,
ժԳլ. լգ. 15։
14 Վրաս ահագին վախ մը ու էդող մը եկաւ, որ բոլոր ոսկորներս ցնցեց։
էԱմբ. գ. 16։
15 Առջևէս մէկ ոգի մը անցաւ, ու մարմնոյս մազերը փուշ փուշ եղան.
16 Անիկայ կայնեցաւ. բայց ես չկրցայ զանազանել անոր կերպարանքը. աչքերուս առջին երևոյթ մը կար. լռութիւն եղաւ, ու ձայն մը լսեցի, որ կ'ըսէր.
17 ըՄիթէ մարդը Աստուծմէ արդար կ'ըլլա՞յ. մարդը իր Արարիչէն մաքուր կ'ըլլա՞յ.
ըԳլ. թ. 2։
18 Ահա Անիկայ էիր ծառաներուն չհաւատար, ու իր հրեշտակներուն վրայ ալ պակասութիւն կը գտնէ.
էԳլ. ժե. 15։ իե. 5։ բ Պետ. բ. 4։
19 ծԱլ ուր կը մնան անոնք՝ որ կաւեղէն տուներու մէջ կը բնակին, որոնց հիմը փոշիին մէջն է, և որոնք ցեցէն առաջ կը ճզմուին։
ծԳլ. ժե. 16։ բ Կոր. դ. 7։ ե. 1։
20 հԱնոնք առտուընէ մինչև իրիկուն կը ճնշուին, ու առանց մէկու մը իմանալուն՝ կը կորսուին յաւիտեան։
հՍաղ. զ. 5, 6։
21 ՅԱհա անոնց վրայ եղած փառաւորութիւնը կը վերցուի. ղանոնք կը մեռնին՝ առանց իմաստուն ըլլալու։
ՅՍաղ. լթ. 11։ խթ. 14։ ղԳլ. լզ. 12։

ԳԼ. Ե

1 Անխոհեմութեան վնասը։ 3 Չարերուն վախճանը թշուառութիւն է։ 6 Նեղութեան ատենը պէտք է Աստուծոյ նայիլ։ 17 Աստուծոյ խրատին երջանիկ վախճանը։

1 Հիմա աղաղակէ. քեզի պատասխան տուող մը կա՞յ արդեօք,

Ն. Ք. ԴԻ. Իրր 1520

ու սուրբերէն որո՞ւն պիտի դարձընես քու երեսդ ։
2 Ստոյգ է որ բարկութիւնը յիմարը կը սպաննէ, ու նախանձը անմիտը կը մեռցընէ ։
3 ա Ես յիմարին արմատանալը տեսայ. բայց շուտ մը անոր բնակութիւնը անիծեցի ։
4 բ Անոր որդիները ապահովութենէ հեռու են. անոնք դրանը մէջ կը կոխկըռտուին, գ և ազատող մը չգտնուիր.
5 Անօթի եղողը կ'ուտէ անոր հունձքը, ու զանիկայ փուշերու մէջէն կը յափշտակէ. ու անոնց ստացուածքը դ *աւարառուն կը կլլէ ։
6 Որովհետև չարիքը հողէն չելլեր, ու թշուառութիւնը գետնէն չըբուսնիր.
7 Թէպէտ մարդը ե թշուառութեան համար կը ծնանի, ինչպէս որ †կրակի կայծերը" վեր կը թռչին ։
8 Իսկ ես Աստուծոյ պիտի դիմէի, ու իմ գործս Աստուծոյ պիտի յանձնէի,
9 զ Որ անհուն մեծ բաներ կ'ընէ, որ մարդ չկրնար քննել, ու անհուն սքանչելիքներ կ'ընէ, որ թիւ չէ համրել զանոնք ։
10 է Անիկայ երկրիս վրայ անձրև կու տայ, ու դաշտերուն վրայ ջուրեր կը խրկէ ։
11 ը Նաև ցածերը կը բարձրացընէ, ու սգաւորները ապահովութեան կ'ելլեն ։
12 թ Անիկայ խորամանկներուն խորհուրդները կը ցրուէ, որ ձեռքերնին կարող չըլլայ իրենց գործքերը գլուխ տանելու.
13 ժ Իմաստունները իրենց խորամանկութեանը մէջ կը բռնէ, ու նենգաւորներուն խորհուրդը շուտով կը խափանուի ։
14 ի Ցորեկը մութի կը բռնուին, ու կէս օրին՝ գիշերուան պէս խարխափելով կը քալեն ։
15 Բայց լ աղքատը՝ սուրէն, անոնց բերնէն, ու հզօրին ձեռքէն կ'ազատէ ։
16 խ Այսպէս աղքատը յոյս կ'ունենայ, իսկ անօրէնութիւնը իր բերանը կը գոցէ ։
17 ծ Ահա երանելի է այն մարդը՝ որն որ Աստուած կը խրատէ. ուրեմն Ամենակարողին յանդիմանութիւնը մի՛ անարգեր.
18 կ Ինչու որ ինքը կը վիրաւորէ ու կը փաթթէ. կը զարնէ, ու իր ձեռքերը կը բժշկեն ։
19 հ Վեց նեղութիւններէ քեզ պիտի ազատէ, ու եօթներորդին՝ ձ քեզի չարիք պիտի չդպչի ։

ա Սաղ. լէ. 35, 36 ։ Երեմ. ժբ. 2, 3 ։
բ Սաղ. ճժթ. ճծե. ճիէ. 5 ։
գ Սաղ. ճթ. 12 ։
դ Գլ. ժը. 9 ։
* Կամ՝ ծարաւը
ե Ծն. գ. 17, 18, 19 ։ ա Կոր. ժ. 13 ։
† Կամ՝ արծիւները. Եբր. կայծի որդիքը
զ Գլ. թ. 10 ։ լէ. 5 ։ Սաղ. խ. 5 ։ հբ. 18 ։ ճխե. 3 ։ Հռով. ժա. 33 ։
է Գլ. իը. 26 ։ Սաղ. կե. 9, 10 ։ ճխէ. 8 ։ Երեմ. ե. 24 ։ ժ. 13 ։ ծա. 16 ։ Գոր. ժդ. 16 ։
ը ա Թագ. բ. 7 ։ Սաղ. ճժգ. 7 ։
թ Նեեմ. դ. 15 ։ Սաղ. լգ. 10 ։ Ես. ը. 10 ։
ժ Սաղ. թ. 15 ։ ա Կոր. գ. 19 ։
ի բ Օր. իը. 29 ։ Ես. ծթ. 10 ։ Ամով. ը. 9 ։
լ Սաղ. լե. 10 ։
խ ա Թագ. բ. 9 ։ Սաղ. ճէ. 42 ։
ծ Սաղ. ղդ. 12 ։ Առակ. գ. 11, 12 ։ Եբր. ժբ. 5 ։ Յակ. ա. 12 ։ Յայտ. գ. 19 ։
կ բ Օր. լբ. 39 ։ ա Թագ. բ. 6 ։ Ես. լ. 26 ։ Ովս. զ. 1 ։
հ Սաղ. լդ. 19 ։ ղա. 3 ։ Առակ. իդ. 16 ։ ա Կոր. ժ. 13 ։
ձ Սաղ. ղա. 10 ։

20 ղ Սովի ժամանակ՝ քեզ մահուանէ պիտի ազատէ, ու պատերազմի մէջ՝ սուրին ձեռքէն ։
21 ճ Լեզուի խարազանէ ապահով պիտի ըլլաս, ու կործանման գալուստէնը անկէ չվախնաս.
22 Կործանման ու սովի վրայ պիտի ծիծաղիս, մ ու երկրի գազաններէն պիտի չվախնաս.
23 յ Քանզի դաշտի քարերուն հետ դաշինք պիտի ունենաս, ու դաշտի գազանները քու հետդ խաղաղութեամբ պիտի վարուին.
24 Ու պիտի գիտնաս որ վրանիդ մէջ յաջողութիւն կայ. և քու բնակարանիդ այցելութիւն պիտի ընես, ու ‡բան մը պակաս պիտի չգտնես":
25 Ու պիտի գիտնաս որ ն քու զաւակներդ շատուոր, ու քու սերունդդ շ երկրի խոտերուն պէս պիտի ըլլան.
26 ո Աղէկ մը ծերացած՝ գերեզմանը պիտի մտնես, ցորենի խուրձերուն դէզին պէս՝ որ իր ժամանակին կը դիզուի ։
27 Ահա մենք ասոր բանը քննեցինք, ասանկ է. մտիկ ըրէ անոր, ու չ քու օգտիդ համար գիտցիր զանիկայ ։

## ԳԼ. Զ

1 Յոբ՝ իր գանգատները իրաւացի ըլլալ կը ցուցընէ ։ 8 Մեռնելու կը ցանկայ, յուսալով որ իր մխիթարութիւնը հոն պիտի գտնէ ։ 14 Կը յանդիմանէ իր բարեկամները իբրև անողորմ մարդիկ ։

1 Ու Յոբ պատասխան տուաւ՝ ու ըսաւ.
2 Երանի՜ թէ իմ սրտմտութիւնս աղէկ կշռուէր, ու իմ թշուառութիւնս մէկ տեղ կշիռքի մէջ դըրուէր ։
3 Քանզի հիմա անիկայ ա ծովուն աւազէն ծանր կ'ըլլար. անոր համար բ իմ խօսքերս ‖կը հատնին ։
4 գ Որովհետև Ամենակարողին նետերը իմ ներսի դիս են, որոնց թոյնը իմ հոգիս կը ծծէ. դ Աստուծոյ արհաւիրքները ինծի դէմ պատերազմելու շարուած են ։
5 Միթէ վայրենի էշը խոտին քովը կը զռնչէ՞. կամ եզը իր մսուրին քովը կը բառաչէ՞.
6 Անհամ բանը առանց աղի կ'ուտուի՞. հաւկիթի ճերմկուցին մէջը համ կա՞յ արդեօք ։
7 Այն բաները՝ որոնց սիրտս չէր ուզեր դպչիլ, իմ զզուելի կերակուրս եղան.
8 Երանի՜ թէ ուզածս կատարուէր, ու տար Աստուած այն բանը՝ որուն կը սպասեմ.
9 Այսինքն թէ՝ ե Աստուած զիս

Ն. Ք. ԴԻ. Իրր 1520
ղ Սաղ. լգ. 19 ։ լէ. 19 ։
ճ Սաղ. ծա. 20 ։
մ Ես. ժա. 9 ։ լե. 9 ։ կե. 25 ։ Եզեկ. լդ. 25 ։
յ Սաղ. ղա. 12 ։ Ովս. բ. 18 ։
‡ Կամ՝ պիտի չսխալիս ։
ն Սաղ. ճժբ. 2 ։
շ Սաղ. հբ. 16 ։
ո Առակ. թ. 11 ։ ժ. 27 ։
չ Սաղ. ճժա. 2 ։
չ Առակ. թ. 12 ։
ա Առակ. իէ. 3 ։
բ Սաղ. հէ. 4 ։
‖ Կամ՝ յանդգնութեամբ են ։
գ Սաղ. լը. 2 ։
դ Սաղ. ձը. 15, 16 ։
ե գ Թագ. ժթ. 4 ։

Ն. Ք. ԳՔ. իրր 1520

ճնշելու հաւանէր, ու ձեռքը երկնցընելով զիս կործանէր։

ղ Ղև. ժթ. 2։ Եսա. ծէ. 15։ Ովս. ժա. 9։
ե Գոր. ի. 20։

10 Բայց տակաւին աս մխիթարութիւնը պիտի ունենամ, և անողորմ ցաւին մէջը պիտի ուրախանամ, որ ես [ղ]Սուրբին խօսքերը [ե]չուրացայ։
11 Ոյժս ի՞նչ է՝ որ դիմանամ, ու վախճանս ի՞նչ է՝ որ կեանքս երկնցընեմ։
12 Միթէ իմ ոյժս քարերու ո՞յժ է, կամ թէ մարմինս պղնձեղէ՞ն է.
13 Չէ՞ որ օգնութենէ զուրկ եմ, ու ձեռնտուութիւնը հեռացած է ինծմէ։

ը Առակ. ժէ. 17։

14 [ը]Թշուառութեան մէջ եղողին՝ իր բարեկամին կարեկցութիւնը պէտք է. բայց անիկայ Ամենակարողին վախը մէկդի թողուց։

թ Սաղ. լը. 11։ խա. 9։
ժ Երեմ. ժե. 18։

15 [թ]Իմ եղբայրներս հեղեղներու պէս խաբէութիւն ըրին ինծի, [ժ]ձորերու հեղեղատներուն պէս՝ որ կ'անցնին.

* Կամ՝ անոնց մէջ ձիւնը կը ծածկուի.

16 Որոնք սառէն պղտորած են, երբոր *անոնց վրայ ձիւնը կը դիզուի.
17 Տաքը տեսածնուն պէս կը ցամքին. խիստ տաք ատենը՝ իրենց տեղէն աներևոյթ կ'ըլլան։

† Կամ՝ անապատը

18 Կարաւանները իրենց ճամբան կը դարձընեն, բայց †դատարկ ելլելով՝ կը կորսուին.

ի Ծն. իե. 15։
լ Գ Թագ. ժ. 1։ Սաղ. հբ. 10։ Եզեկ. իէ. 22, 23։

19 [ի]Թեմայի կարաւանները նայեցան. [լ]Սաբայի ճամբորդները անոնց յուսացան.

խ Երեմ. ժդ. 3։

20 [խ]Յուսալնուն համար ամչցան. հոն գացած ատեննին կարմրեցան։

ծ Գլ. ժգ. 4։
կ Սաղ. լը. 11։

21 Յիրաւի ինծի [ծ]անօգուտ եղաք. թշուառութիւն տեսաք ու [կ]սոսկացիք.
22 Ես ձեզի ըսի՞ որ ինծի բերէք, ու ձեր ստացուածքէն ընծայ տուէք ինծի.
23 Կամ թէ զիս թշնամիին ձեռքէն ազատեցէք, ու բռնաւորներուն ձեռքէն զիս փրկեցէ՛ք։
24 Սորվեցուցէ՛ք ինծի՝ ու լուռ պիտի կենամ, ու հասկցուցէ՛ք ինծի՝ թէ ինչ բանի մէջ սխալեր եմ։
25 Ուղիղ խօսքերը որչափ զօրաւոր են. բայց ձեր յանդիմանութիւնը ի՞նչ կը նշանակէ։
26 Արդեօք խօսքե՞ր յանդիմանել կը մտածէք. յուսահատին խօսքերը հով են։

հ Սաղ. ծե. 6։

27 Մանաւանդ որբին համար որոգայթ կը լարէք, ու [հ]ձեր բարեկամին համար հոր կը փորէք։
28 Հիմա հաճեցէ՛ք ինծի նայելու. թէ որ սուտ կը խօսիմ, յայտնի է ձեզի։

ձ Գլ. ժէ. 10։

29 [ձ]Դարձէ՛ք՝ կ'աղաչեմ, ու անիրաւութիւն չըլլայ. այո՛ դարձէ՛ք. քանզի աստով իմ արդարութիւնս կը յայտնուի։

ղ Գլ. ժբ. 11։ լդ. 3։

30 Միթէ իմ լեզուիս վրայ անիրաւութիւն կա՞յ. միթէ [ղ]իմ քիմքս չար բաները չը՞կրնար զանազանել։

## ԳԼ. Է

1 Յոբ իր մեռնելու փափաքիլը կ'արդարացընէ։ 12 Իր անհանգստութեանը համար. 17 ու Աստուծոյ քննողութեանը համար գանգատ կ'ընէ։

ա Գլ. ժդ. 5, 14։ Սաղ. լթ. 4։

1 Միթէ մարդս երկրի վրայ [ա]պատերազմի ասպարէզ մը չունի՞. և անոր օրերը վարձկանի մը օրերուն պէս չե՞ն։
2 Ինչպէս որ ծառան իրիկուան շուքին կը փափաքի, ու վարձկանը իր վարձքին կը սպասէ

բ Տես գլ. իթ. 2։

3 Անանկ ալ՝ ունայնութեան [բ]ամիսներ ինծի բաժին տրուած են, ու թշուառութեան գիշերներ ինծի համար որոշուած են։

գ Բ Օր. իը. 67։ Գլ. ժէ. 12։

4 [գ]Պառկած ատենս կ'ըսեմ. Ե՞րբ պիտի ելլեմ. ու գիշերը ե՞րբ պիտի անցնի. ու մինչև արշալոյսը անհանգստութեամբ լցուած եմ։

դ Եսա. ժդ. 11։

5 Մարմինս [դ]որդերով ու հողի կոշտերով ծածկուած է. մորթս կը ճեղքուի ու կը հալի։

ե Գլ. թ. 25։ ժզ. 22։ ժէ. 11։ Սաղ. ղ. 6։ ճբ. 11։ ճգ. 15։ ճխդ. 4։ Եսա. լը. 12։ խ. 6։ Յակ. դ. 14։

6 [ե]Օրերս ոստայնանկին կկոցէն արագ կ'անցնին, ու կը սպառին առանց յոյս մը թողլու։

զ Սաղ. հը. 39։ ձթ. 47։

7 Յիշէ՛ որ [զ]կեանքս հովի պէս է. աչքս այսուհետև բարիք պիտի չըտեսնէ։

է Գլ. ի. 9։

8 [է]Զիս տեսնողին աչքերը՝ նորէն զիս պիտի չտեսնեն, քու աչքերդ իմ վրաս կը նային, ու ես բնաջինջ կ'ըլլամ։

ը Բ Թագ. ժբ. 23։

9 Ինչպէս որ ամպը կը ցրուի կ'երթայ, անանկ ալ [ը]դերեզմանը իջնողը պիտի չելլէ.

թ Գլ. ը. 18։ ի. 9։ Սաղ. ճգ. 16։

10 Ալ անիկայ իր տունը պիտի չդառնայ, [թ]ու իր բնակարանը ալ զանիկայ պիտի չճանչնայ։

ժ Սաղ. լթ. 1, 9։ խ. 9։
ի Ա Թագ. ա. 10։ Գլ. ժ. 1։

11 Ուստի ես [ժ]իմ բերանս պիտի չզսպեմ. հոգիիս նեղութեամբը պիտի խօսիմ, [ի]սրտիս դառնութեամբը պիտի դանդատիմ։
12 Միթէ ես ծո՞վ եմ, կամ կէտ, որ իմ վրաս պահապաններ կը դնես։

լ Գլ. թ. 27։

13 [լ]Երբոր ես կ'ըսեմ թէ անկողինս զիս պիտի մխիթարէ, մահիճս իմ դանդատներս պիտի պակսեցընէ,
14 Զիս երազներով կը վախցընես, ու ցնորքներով կը զարհուրեցընես։
15 Վասն որոյ աւելի կ'ընտրեմ խեղդուիլ ու մեռնիլ, քան թէ իմ ոսկորներուս պահպանութիւնը։

խ Գլ. ժ. 1։

16 [խ]Ես ձանձրացած եմ, ու չեմ ուզեր որ յաւիտեան ապրիմ.

Ն. Ք. ԳՔ. եւ 1520

ծ Գլ. Ժ. 20: ԺԴ. 6: Սաղ. ԼԹ. 13:
ղ Սաղ. ԿԸ. 9:
հ Սաղ. Ը. 4: ՃԽԴ. 3: Եբր. Բ. 6:

ծ ինծմէ ետ կեցիր. ինչու որ ղ իմ
օրերս ունայնութիւն է։
17 հ Մարդը ո՞վ է՝ որ դուն անիկայ
մեծ բան մը համարիս, ու անոր
համար հոգ տանիս.
18 Եւ ամէն առտու զանիկայ դի-
տես, ու ամէն վայրկեանի մէջ
փորձես։
19 Մինչեւ ե՞րբ ինծմէ ետ չես կե-
նար. թուքս կլլելու չափ ալ
թող չես տար։
20 Մեղանչեցի, քեզի ի՞նչ ընեմ,
ո՛վ մարդիկները քննող. ինչո՞ւ
համար յ զիս քեզի նշան առիր, ու
ես ինծի բեռ եղայ։
21 Ինչո՞ւ իմ մեղքս չես ներեր, ու
իմ անօրէնութիւնս չես վերցըներ.
որովհետեւ հիմա հողին մէջը պիտի
պառկիմ, ու առաւօտուն թէ որ
զիս փնտռես, պիտի չգտնուիմ։

յ Գլ. ԺԴ. 12: Սաղ. ԻԱ. 12: Ողբ. Գ. 12:

ԳԼ. Ը

1 Բաղդատ կը ցուցընէ Աստուծոյ արդարու-
թիւնը՝ որով կը վարուի մարդոց հետ իրենց
գործքերուն համեմատ. 8 Անիկայ առջի դա-
րերէն ապացոյցներ յառաջ բերելով, կեղծաւո-
րին անխուսափելի կործանումը կը հաստատէ. 20
Աստուծոյ արդար գործքերը յիշելէն ետեւ՝
զանոնք Յոբին վրայ կը յարմարցընէ։

1 Ան ատենը Բաղդատ Սօքեցին պա-
տասխան տուաւ ու ըսաւ.
2 Մինչեւ ե՞րբ այդպէս պիտի խօ-
սիս, ու բերնիդ խօսքերը սաստիկ
հովի պէս պիտի ըլլան։
3 ա Միթէ Աստուած դատաստանը
կը խափանէ՞, կամ Ամենակարողը
իրաւունքը կը խափանէ՞։
4 Եթէ քու բ տղաքդ անոր դէմ
մեղանչեր են, ան ալ իրենց յան-
ցանքին մատնած է զանոնք.
5 գ Եթէ դուն առտուները կանուխ
զԱստուած փնտռես, ու Ամենա-
կարողէն շնորհք խնդրես,
6 Եթէ դուն մաքուր ու շիտակ ըլ-
լաս, հիմա անշուշտ անիկայ քեզի
համար պիտի արթըննայ, ու քու
արդարութեանդ բնակարանին յա-
ջողութիւն պիտի տայ.
7 Թէեւ քու սկիզբդ փոքր ըլլայ,
բայց քու վերջդ խիստ պիտի մեծ-
նայ։
8 դ Հիմա հարցո՛ւր առջի ազգե-
րուն. ու անոնց հայրերը քննելու
ուշադրութիւն ըրէ.
9 (Ինչու որ ե մենք երէկուաններն
ենք, ու բան մը չենք գիտեր. քան-
զի մեր կեանքը երկրի վրայ ստուերի
պէս է.)
10 Ահա՛ անոնք քեզի պիտի սորվե-
ցընեն, քեզի պիտի խօսին, ու ի-
րենց սրտէն խօսքեր պիտի հանեն։
11 Միթէ պրտուն առանց տիղմի կը
բուսնի՞. կնիւնը առանց ջուրի
կ'աճի՞.

ա Ծն. ԺԸ. 25: Բ Օր. ԼԲ. 4: Բ Մն. ԺԹ. 7: Գլ. ԼԴ. 12. 17: Դան. Թ. 14: Հռով. Գ. 5:
բ Գլ. Ա. 5, 18:
գ Գլ. Ե. 8: ԺԱ. 13: ԻԲ. 23, ետ:
դ Բ Օր. Դ. 32: ԼԲ. 7: Գլ. ԺԵ. 18:
ե Ծն. ԽԷ. 9: Ա Մն. ԻԹ. 15: Գլ. Է. 6: Սաղ. ԼԹ. 5: ՃԲ. 11: ՃԽԴ. 14:

12 Անիկայ դեռ իր դալարու-
թեանը մէջ՝ ու չկտրուած՝ ամէն
խոտէն առաջ կը չորնայ։
13 Ասանկ պիտի ըլլայ զ ամէն անոնց
ճամբաները՝ որ զԱստուած կը
մոռնան. ու է *կեղծաւորին յոյսը
պիտի կորսուի.
14 Ինչու որ անոր յոյսը պիտի կըտ-
րուի. ու անոր վստահութիւնը
սարդի †ոստայնին պէս պիտի ըլլայ.
15 ը Անիկայ իր տանը պիտի կռթը-
նի, բայց ան՝ հաստատութիւն պի-
տի չունենայ. իր ձեռքովը զանիկայ
պիտի բռնէ, բայց ան՝ կանգնած
պիտի չմնայ։
16 ‡ Արեւը չծագած՝ դալար է, ու
անոր ճիւղերը՝ իր ելած պարտէզէն
վեր կ'ելլէ։
17 Անոր արմատները քարակոյտին
կը փաթթուին, ու քարերուն տե-
ղը կը տեսնէ։
18 ժ Թէ որ մէկը զանիկայ իր տեղէն
խլէ, տեղը պիտի ուրանայ զանի-
կայ՝ ըսելով թէ՝ Ես քեզ չտեսայ։
19 Ահա՛ անոր ճամբուն ուրախու-
թիւնը աս է, ու ի հողէն ուրիշները
պիտի ելլեն։
20 Ահա Աստուած արդար մարդը
չմերժեր, ոչ ալ չարերուն ձեռն-
տու կ'ըլլայ,
21 Մինչեւ որ քու բերանդ ծիծաղով
լեցընէ, ու շրթունքներդ ուրա-
խութեան ձայնով։
22 Քեզ ատողները լ ամօթով պիտի
ըլլան. ու ամբարիշտներուն վրանը
բնաջինջ պիտի ըլլայ։

ԳԼ. Թ

1 Յոբ՝ Աստուծոյ արդարութիւնը խոստովանե-
լով՝ կը ցուցընէ թէ ո՛րչափ անկարելի բան է
անոր հետ վիճաբանիլը. 22 Կը հաստատէ թէ
անմեղ մարդը պէտք չէ դատապարտել իր քա-
շած նեղութիւններուն համար։

1 Ու Յոբ պատասխան տուաւ ու
ըսաւ.
2 Իրաւցընէ անանկ ըլլալը գիտեմ.
ու ա մարդը ի՞նչպէս պիտի արդա-
րանայ Աստուծոյ առջեւ։
3 Եթէ անոր հետ վիճաբանիլ ու-
զէ, հազարէն մէկուն չկրնար անոր
պատասխան տալ։
4 բ Անիկայ սրտով իմաստուն, եւ
ուժով կարող է. ո՛վ անոր դէմ իր
սիրտը խստացուցեր, ու յաջողու-
թիւն գտեր է։
5 Անիկայ լեռները կը տեղափոխէ,
ու անոնք չեն գիտեր. իր բարկու-
թեամբը զանոնք կը տապալէ.
6 գ Երկիրը իր տեղէն կը շարժէ, ու
դ անոր սիւները կը դողան։
7 Արեւին հրաման կ'ընէ, ու անի-
կայ չծագիր. ու աստղերը կը
կնքէ.

Ն. Ք. ԳՔ. եւ 1520

զ Սաղ. ՃԻԹ. 6: Երեմ. ԺԷ. 6:
է Գլ. ԺԱ. 20: ԺԸ. 14: ԻԷ. 8: Սաղ. ՃԺԲ. 10: Առակ. Ժ. 28:
* Կամ՝ ամբարշտին
ը Ես. ԾԹ. 5, 6:
† Եբր. տունը
թ Գլ. ԻԷ. 18:
‡ Եբր. Արեւէն առաջ
ժ Գլ. Է. 10: Ի. 9: Սաղ. ԼԶ. 36:
ի Սաղ. ՃԺԳ. 7:
լ Սաղ. ԼԵ. 26: ՃԹ. 29:
ա Սաղ. ՃԽԳ. 2: Հռով. Գ. 20:
բ Գլ. ԼԶ. 5:
գ Ես. Բ. 19, 21: Անգ. Բ. 6, 21: Եբր. ԺԲ. 26:
դ Գլ. ԻԶ. 11:

Ն. Ք. գժ. իրր 1520

ե Ծն. ա. 6; Սաղ. ճգ. 2, 3;
* Եբր. բարձրերուն
զ Ծն. ա. 16; Գլ. լը. 31, 32; Ամով. ե. 8;
է Գլ. ե. 9; Սաղ. հա. 15;
ը Գլ. իգ. 8, 9; լե. 14;
թ Ես. խե. 9; Երեմ. ժը. 6; Հռով. թ. 20;
ժ Գլ. իզ. 12; Ես. լ. 7;
ի Գլ. ժ. 15;
լ Գլ. բ. 3; լդ. 6;
† Կամ՝ ո՞վ զիս ատեան պիտի կանչէ;
խ Ժող. թ. 2, 3; Եզեկ. իա. 3;
ծ բ Թագ. ժե. 30; ժթ. 4; Երեմ. ժդ. 4;
կ Գլ. է. 6, 7;
‡ Կամ՝ Ցանկալի. Ե-կամ՝ Ասպատակի
հ Ամբ. ա. 8;
ձ Գլ. է. 13;

8 ե Ինքը մինակ երկինքը կը տարածէ, ու ծովուն * ալիքներուն վրայ կը քալէ:
9 զ Անիկայ ըրաւ Արջը, Հայկը, ու Բազմաստեղը, ու հարաւին շտեմարանները:
10 է Անիկայ անքննելի մեծագործութիւններ, ու անթիւ սքանչելիքներ կ'ընէ:
11 ը Ահա անիկայ քովէս կ'անցնի, ու ես չեմ տեսներ. յառաջ կ'անցնի, ու չեմ իմանար:
12 թ Թէ որ յափշտակէ, ո՞վ կրնայ զանիկայ արգիլել. ո՞վ կարող է ըսել անոր թէ՝ Ի՞նչ կ'ընես:
13 Աստուած իր բարկութիւնը ետ չդարձըներ. ու ժ հպարտ օգնականները անոր տակը կը խոնարհին:
14 Ո՞ւր մնաց որ ես անոր պատասխան տամ, ու անոր դէմ վիճելու համար խօսքերս ընտրեմ.
15 ի Որովհետեւ՝ արդար ալ ըլլամ, պատասխան պիտի չտամ. իմ Դատաւորէս շնորհք պիտի խնդրեմ:
16 Թէ որ ես զանիկայ կանչէի, ու ինծի պատասխան ալ տար, պիտի չհաւատայի թէ անիկայ իմ ձայնս լսած է:
17 Որովհետեւ փոթորիկով զիս ճըմլեց, ու լ առանց պատճառի իմ վէրքերս աւելցուց:
18 Զիս չթողուր որ շունչ առնեմ, հապա դառնութեամբ զիս կը լեցնէ:
19 Թէ որ զօրութիւն խնդրուի, ահա անիկայ զօրաւոր է. իսկ թէ որ դատաստան՝ †ինծի համար ո՞վ վկայութիւն պիտի տայ":
20 Թէ որ անձս արդարացընեմ, իմ բերանս զիս կը դատապարտէ. Թէ որ զիս կատարեալ երեւցընեմ, զիս յանցաւոր կը հանէ:
21 Թէ որ զիս կատարեալ երեւցընեմ, իմ անձս չեմ ճանչնար, իմ կեանքս կ'արհամարհեմ:
22 Ամէնը մէկ է. անոր համար ըսի թէ՝ խ Անիկայ արդարը ու ամբարիշտը մէկտեղ բնաջինջ կ'ընէ:
23 Թէ որ հարուածը շուտով մեռցընէ, անիկայ անմեղին պատուհասի փորձութեանը վրայ կը ծիծաղի:
24 Երկիրը ամբարշտին ձեռքը տրուեցաւ. ծ Աստուած անոր դատաւորներուն երեսը կը ծածկէ. եթէ ոչ՝ ո՞վ է անիկայ:
25 Արդ՝ կ իմ օրերս սուրհանդակէն արագ են. փախան ու բարութիւն չտեսան:
26 ‡ Արագագնաց նաւերու պէս՝ հ որսի վրայ յարձակող արծիւի պէս կ'անցնին:
27 ձ Թէ որ ըսեմ՝ Գանգատս մոռնամ, տրտմութիւնս ձգեմ՝ ու զուարթ ըլլամ,
28 ղ Բոլոր թշուառութիւններէս կը վախնամ. գիտեմ որ ճ զիս անմեղ պիտի չհամարիս:
29 Ամբարիշտ պիտի սեպուիմ. ինչո՞ւ համար զուր տեղը աշխատիմ:
30 մ Թէ որ ձիւնի ջրով լուացուիմ, ու ձեռքերս ‖ մաքրութիւնով սրբեմ,
31 Ան ժամանակը զիս փոսը կ'ընկղմես. ու հանդերձս պիտի զզուի ինծմէ:
32 Ինչու որ յ ինծի պէս մարդ չէ՝ որ անոր պատասխան տամ, ու մէկտեղ դատաստանի երթանք:
33 ն Միջնորդ դատաւոր մը չկայ մեր մէջը, որ կարենայ իր ձեռքը մեր երկուքին վրայ դնել:
34 շ Թող իր գաւազանը վրայէս վերցընէ, ու անոր երկիւղը՝ ալ զիս չզարհուրեցընէ,
35 Ան ատենը պիտի խօսիմ, ու անկէ պիտի չվախնամ. բայց եղած վիճակիս մէջ՝ ես իմ անձիս տէրը չեմ:

Ն. Ք. գժ. իրր 1520

ղ Սաղ. ճժթ. 120;
ճ Ել. ի. 7;
մ Երեմ. բ. 22;
‖ Կամ՝ օճառով
յ Ժող. զ. 10; Ես. խե. 9; Երեմ. խթ. 19; Հռով. թ. 20;
ն Հմր 19; ա Թագ. բ. 25;
շ Գլ. ժգ. 20—22; լգ. 7; Սաղ. լթ. 10;

ԳԼ. Ժ

1 Յոբ գանգատելու համարձակելով՝ Աստուծոյ կը բողոքէ իր նեղութեանը համար: 18 Իր կեանքին համար կը գանգատի, ու կը խնդրէ որ՝ իր մեռնելէն առաջ քիչ մը հանգստութիւն ունենայ:

1 ո Հոգիս կեանքէս ձանձրացաւ. համարձակ պիտի գանգատիմ, չ Հոգիիս դառնութեամբը պիտի խօսիմ.
2 Պիտի ըսեմ Աստուծոյ. Մի՛ դատապարտեր զիս. յայտնէ ինծի՝ թէ ի՛նչ բանի համար հետս կը վիճիս:
3 Քեզի աղէ՞կ կ'երեւնայ որ զիս հարստահարես, ու պ քու ձեռացդ գործը արհամարհես, և ամբարիշտներուն խորհուրդին լոյս տաս:
4 Միթէ դուն մարմնաւո՞ր աչքեր ունիս. ջ մարդուն տեսածի՞ն պէս կը տեսնես:
5 Միթէ քու օրերդ մարդո՞ւն օրերուն պէս են. քու տարիներդ մարդո՞ւն օրերուն պէս են,
6 Որ դուն իմ յանցանքս փնտռես, ու մեղքս քննես:
7 ռ Գիտես որ յանցաւոր չեմ, բայց չկայ մէկը՝ որ քու ձեռքէդ ազատէ զիս:
8 ս Քու ձեռքերդ զիս ստեղծեցին, ու § իմ բոլոր անդամներս" կազմեցին, ու զիս բնաջի՞նջ կ'ընես:
9 Կ'աղաչեմ յիշէ, որ վ զիս կաւի պէս շինեցիր, ու զիս հո՞ղ պիտի դարձընես:
10 տ Չէ՞ որ զիս կաթի պէս թափե-

ո գ Թագ. ժթ. 4; Գլ. է. 16; Յովն. դ. 3, 8;
չ Գլ. է. 11;
պ Սաղ. ճլը. 8; Ես. կդ. 8;
ջ ա Թագ. ժզ. 7;
ռ Սաղ. ճլթ. 1, 2;
ս Սաղ. ճժթ. 73;
§ Եբր. զիս շուրջանակի
վ Ծն. բ. 7; գ. 19; Ես. կդ. 8;
տ Սաղ. ճլթ. 14—16;

Ն. Ք. ՅՔ. իրր 1520

ցիր , ու պանիրի պէս թանձրա-
ցուցիր .
11 Զիս մորթով ու մսով հագուե-
ցուցիր , ու զիս ոսկորներով ու ջի-
ղերով հիւսեցիր .
12 Ինծի կեանք ու ողորմութիւն
շնորհեցիր , և քու խնամքդ իմ
հոգիս պահեց ։
13 Ու ասոնք սրտիդ մէջը պահե-
ցիր . գիտեմ որ ասոնք քու *միտքդ
են ։
14 Եթէ մեղք գործեմ , ᵃդուն զիս
կը դիտես , ու իմ անօրէնութենէս
անմեղ չես համարիր զիս ։
15 Եթէ ամբարշտութիւն ընեմ ,
ᵇվա՜յ է ինծի , ᶜու արդար ալ ըլ-
լամ՝ գլուխս չեմ կրնար վերցընել .
անարգանօք լցուած եմ . հիմա
ᵈիմ թշուառութեանս նայէ ,
16 †Որ աւելնալու վրայ է" . ᵉառ-
իւծի պէս զիս կ'որսաս , և դար-
ձեալ իմ վրաս ‡յաղթող կ'ըլլաս ։
17 Ինծի դէմ վկաներդ կը նորոգես ,
ու քու սրտմտութիւնդ իմ վրաս
կը շատցընես . փոփոխութիւններ
ու պատերազմ ունիմ ։
18 Արդ՝ ᶠինչո՞ւ համար զիս արգան-
դէն հանեցիր . երանի՜ թէ հոն մեռ-
նէի , ու աչք չտեսնէր զիս ,
19 Որ չեղածի պէս ըլլայի , ու մօրս
անդամնդէն գերեզմանը տարուէի ։
20 ᵍԻմ օրերս սակաւաթիւ չե՞ն .
ʰետ կեցիր ինծմէ , ու թո՛ղ տուր
որ քիչ մը հանգչիմ .
21 Ան տեղը երթալէս առաջ , ուս-
կից որ ետ պիտի չդառնամ , ⁱմութ
երկիրը ու ʲմահուան շուքը ,
22 Ան խիստ մութ երկիրը , մա-
հուան շուքին խաւարը , ուր տեղ
կարգ չկայ , ու լոյսը խաւարի պէս
է ։

ԳԼ . ԺԱ

1 Սոփար կը յանդիմանէ Յոբը՝ իր անձը արդա-
րացընելուն համար ։ 5 Աստուծոյ իմաստու-
թեանը անքննելի ըլլալը ։ 13 Ապաշխարողին
համար որոշուած օրհնութիւնը ։

1 Ա՛ն ատենը Սոփար Նաամացին
պատասխան տուաւ ու ըսաւ .
2 Այդքան խօսքերուն պատասխան
պիտի չտրուի՞ , ու լեզուանի մար-
դը կրնա՞յ խօսքով արդարանալ ։
3 Քու պարապ խօսքերդ մարդիկը
պիտի լռեցընե՞ն , ու երբոր դուն
ծաղր կ'ընես , պիտի չըլլա՞յ մէկը որ
քեզ ամչցընէ ։
4 Ինչու որ ᵃդուն ըսիր թէ՝ Իմ
խօսքս մաքուր է . ու քու աչքիդ
առջևը անարատ եմ ,
5 Սակայն երանի թէ Աստուած
խօսէր , ու քեզի դէմ իր շրթուն-
քը բանար ,
6 Ու քեզի յայտնէր իմաստութեան
գաղտնիքը , որ կրկնապատիկ իմացածին

կրկինն է ։ Հիմա գիտցիր որ ᵇԱս-
տուած՝ քու անօրէնութեանդ մէկ
մասը ‖անտես կ'ընէ" ։
7 ᶜԱստուծոյ գաղտնիքը կրնա՞ս
գտնել . Ամենակարողը կատարելա-
պէս կրնա՞ս իմանալ ։
8 Անիկայ երկինքի պէս բարձր է .
ի՞նչ կրնաս ընել . դժոխքէն խո-
րունկ է . ի՞նչ կրնաս գիտնալ ։
9 Անոր չափը երկրէն երկայն՝ ու
ծովէն լայն է ։
10 ᵈԵթէ անիկայ փոխէ , գոցէ ,
կամ ժողվէ , ո՞վ ᵉանոր արգելք
պիտի ըլլայ .
11 Քանզի ᶠինքը ունայն մարդիկը
կը ճանչնայ . ու անօրէնութիւնը
տեսնելով՝ ուշադրութիւն պիտի
չընէ՞ ,
12 Բայց ᵍանմիտ մարդը կը հպար-
տանայ . ու մարդը՝ վայրենի իշու
ձագի պէս կը ծնանի ։
13 ʰԹէ որ դուն ⁱսիրտդ պատրաս-
տես , ու ʲձեռքերդ անոր երկընցը-
նես ,
14 Թէ որ քու ձեռքդ անօրէնու-
թիւն կայ , անիկայ հեռու հեռա-
ցուր , ու ᵏմի՛ թողուր որ վրաններ-
րուդ մէջ անզգամութիւն բնակի ։
15 ˡԱն ատենը անշուշտ կրնաս
պարզերես մնալ . հաստատ կ'ըլ-
լաս , ու բնաւ մը չես վախնար ։
16 ᵐՔու թշուառութիւնդ պիտի
մոռնաս . անցած ջուրերու պէս
պիտի յիշես զանիկայ ։
17 Ու կեանքդ՝ §ⁿկէս օրուան լոյսէն
պայծառ պիտի ըլլայ" . թէև խաւա-
րի մէջ ես , առտուան պէս պիտի
ըլլաս .
18 Ու ապահով պիտի ըլլաս , ինչու
որ յոյս կայ քեզի . պիտի փորես ,
ու ᵒապահովութեամբ քնանաս ։
19 Ու պիտի պառկիս , ու վախցը-
նող պիտի չըլլայ . ու շատերը ᵖքու
երեսդ պիտի փնտռեն ։
20 Բայց ᵠամբարիշտներուն աչքերը
պիտի նուաղին , ու անոնց ապաս-
տանարան պիտի ⁑չգտնուի , ու
ʳյոյսերնին հոգեվարութիւն պիտի
ըլլայ ։

ԳԼ . ԺԲ

1 Յոբ իր անձին չատագովութիւն կ'ընէ իր բա-
րեկամներուն դէմ՝ որոնք զինքը կը յանդիմա-
նէին ։ 7 Աստուծոյ ամենակարողութիւնը կը
խոստովանի ։

1 Ու Յոբ պատասխան տուաւ ու ը-
սաւ .
2 Արդարև ժողովուրդը դուք էք ,
ու իմաստութիւնը ձեզի հետ պիտի
մեռնի ։
3 ᵃԵս ալ ձեզի պէս խելք ունիմ .
ես ձեզմէ նուաստ չեմ . ու ասանկ
բաներ ††ո՞վ չգիտեր" ։
4 ᵇԻր բարեկամէն ծաղր եղող մարդ

* Եբր . քովդ
ᵃ Սաղ . ճլթ . 1 ։
ᵇ Ես . գ . 11 ։
ᶜ Գլ . Թ . 12 , 15 , 20 , 21 ։
ᵈ Սաղ . իե . 18 ։
† Կամ՝ Իսկ թէ որ գլուխս վերցընեմ ,
ᵉ Ես . լը . 13 ։ Ողբ . գ . 10 ։
‡ Եբր . զարմանալի
ᶠ Գլ . գ . 11 ։
ᵍ Տես Գլ . է . 6 , 16 ։ ը . 9 ։ Սաղ . լթ . 5 ։
ʰ Գլ . է . 16 , 19 ։ Սաղ . լթ . 13 ։
ⁱ Սաղ . ձը . 12 ։
ʲ Սաղ . իգ . 4 ։
ᵃ Գլ . գ . 16 ։ ժ . 7 ։

Ն. Ք. ՅՔ. իրր 1520
ᵇ Եզր . Թ . 13 ։
‖ Եբր . քեզի կը մոռցընէ ։
ᶜ Ժող . գ . 11 ։ Հռով . ժա . 33 ։
ᵈ Գլ . Թ . 12 ։ ժբ . 14 ։ Յայտ . գ . 7 ։
ᵉ Գլ . Թ . 12 ։
ᶠ Սաղ . ժ . 11 , 14 ։ լե . 22 ։ ղդ . 11 ։
ᵍ Սաղ . հգ . 22 ։ ղբ . 6 ։ Ժող . գ . 18 ։ Հռով . ա . 22 ։
ʰ Գլ . ե . 8 ։ իբ . 21 ։
ⁱ Թագ . է . 3 ։ Սաղ . հը . 8 ։
ʲ Սաղ . ձը . 9 ։ Ճխդ . 6 ։
ᵏ Սաղ . ճա . 3 ։
ˡ Տես Ծն . դ . 5 , 6 ։ Գլ . իբ . 26 ։ Սաղ . ճժթ . 6 ։ ա Յօհ . գ . 21 ։
ᵐ Ես . կե . 16 ։
§ Եբր . կէս օրէն պիտի բարձրանայ .
ⁿ Սաղ . լէ . 6 ։ Ճժբ . 4 ։ Ես . ծը . 8 , 10 ։
ᵒ Ղև . իզ . 5 , 6 ։ Սաղ . գ . 5 ։ դ . 8 ։ Առակ . գ . 24 ։
ᵖ Սաղ . խե . 12 ։
ᵠ Ղև . իզ . 16 ։ բ Օր . իը . 65 ։
⁑ Եբր . կորսուի ,
ʳ Գլ . ը . 14 ։ ժը . 14 ։ Առակ . ժա . 7 ։
ᵃ Գլ . ժգ . 2 ։
†† Եբր . որո՞ւն քովը չկայ ։
ᵇ Գլ . ժզ . 10 ։ ժէ . 2 . 6 ։ իա . 3 ։ լ . 1 ։

մըն եմ ես. բայց ով որ Աստուծոյ աղաղակէ, Աստուած պատասխան կու տայ անոր. արդար ու կատարեալ մարդը ծաղր կ'ըլլայ ։
5 Ոտքը սահելու վրայ եղողը՝ հանգիստ կեանք վարողին կարծեացը համեմատ՝ անպիտան ջահ մըն է ։
6 Գողերուն վրանները յաջողութեան մէջ են, ու զԱստուած բարկացընողները ապահով են, որոնց ձեռքը Աստուած առատութեամբ *կը լեցնէ ։
7 Բայց աղէ՝ անասուններուն հարցուր, որ քեզի սորվեցնեն, ու երկինքի թռչուններուն՝ որ քեզի իմացընեն ։
8 Կամ թէ երկրին զրուցէ, ու անիկայ քեզի պիտի սորվեցնէ. ծովուն ձուկերը անգամ քեզի պիտի պատմեն ։
9 Աս ամէն բաներով ո՞վ չգիտեր, թէ ասիկայ ընողը Տէրոջը ձեռքն է.
10 Որ ամէն ապրողին անձը՝ ու բոլոր մարդկային մարմնոյ հոգին անոր ձեռքն է ։
11 Միթէ ականջը խօսքերը չորոշեր, ինչպէս որ քիմքը կերակուրին համը կ'առնէ ։
12 Իմաստութիւնը ծերերուն քովն է, ու հանճարը՝ օրերուն շատութեանը մէջ ։
13 Անոր քովն է իմաստութիւնը ու զօրութիւնը. հանճարը ու իմաստութիւնը Անորն է ։
14 Ահա ան կը փլցընէ, ու ալ չշինուիր. երբ որ մէկուն վրայ գոցէ, ալ չբացուիր ։
15 Ահա անիկայ ջուրերը կ'արգիլէ ու կը չորնան, ու զանոնք թող կու տայ, ու երկիրը տակնուվրայ կ'ընեն ։
16 Զօրութիւնը ու հանճարը անոր հետն են. խաբուողը ու խաբողը անորն են ։
17 Խորհրդականները կողոպտուած կը պտըտցընէ, ու դատաւորները կը յիմարեցընէ ։
18 Թագաւորներուն իշխանութիւնը կը քակէ, ու մէջքերնին գօտի կը կապէ ։
19 Նախարարները կողոպտուած կը պտըտցընէ, ու զօրաւորները կը կործանէ ։
20 Հաւատարիմներուն շրթունքը կը պապանձեցընէ, ու ծերերուն խելքը կ'առնէ ։
21 Ազնուականներուն վրայ անարգութիւն կը թափէ, ու հզօրներուն գօտին կը թուլցընէ ։
22 Խորունկ բաները՝ խաւարէն հանելով կը յայտնէ, ու մահուան ստուերը լոյսը կը հանէ ։
23 Ազգերը կը շատցընէ, ու զանոնք կը կորսընցընէ. ազգերը ծայրէն ծայրէն կը տարածէ, ու զանոնք ետ կը դարձընէ ։
24 Երկրի ժողովրդոցը առաջնորդներուն խելքը կ'առնէ, ու ճամբայ չունեցող անապատներու մէջ կը մոլորեցընէ զանոնք ։
25 Անոնք առանց լոյսի՝ մութին մէջ խարխափելով կ'երթան. ու գինովներու պէս կը մոլորեցընէ զանոնք ։

## ԳԼ. ԺԳ

1 Յոբ իր բարեկամները կը յանդիմանէ աչառութեան համար ։ 14 Կը խոստովանի թէ իր յոյսը Աստուծոյ վրայ է ։ 20 Կը փափաքի գիտնալ թէ ի՛նչ են իր մեղքերը, և թէ Աստուած ի՛նչ դիտաւորութիւնով զանիկայ նեղութեան մէջ ձգած է ։

1 Ահա աս ամէնը իմ աչքս տեսաւ, ականջս լսեց զանիկայ ու իմացաւ ։
2 Ձեր գիտցածը ես ալ գիտեմ. ես ձեզմէ նուաստ չեմ ։
3 Բայց ես Ամենակարողին խօսելու՝ ու իմ իրաւունքներս Աստուծոյ ներկայացընելու կը փափաքիմ.
4 Սակայն դուք սուտ խօսքեր կը հնարէք. ամէնքդ ալ ունայնութեան բժիշկներ էք ։
5 Երանի՛ թէ բոլորովին լուռ կենայիք. և ասոր բանը ձեզի իմաստութիւն պիտի սեպուէր ։
6 Հիմա իմ վիճաբանութիւնս մտիկ ըրէք, ու շրթունքներուս փաստերուն ականջ դրէք ։
7 Աստուծոյ համար անիրաւութի՞ւն կը զրուցէք, ու անոր համար նենգութի՞ւն կը խօսիք ։
8 Միթէ աչառութի՞ւն կ'ընէք անոր, կամ Աստուծոյ փաստը կը պաշտպանէք ։
9 Աղէ՞կ է որ անիկայ ձեզ քննէ. պիտի խաբէ՞ք զանիկայ մարդ խաբելու պէս ։
10 Եթէ ծածուկ աչառութիւն ալ ընէք, անշուշտ անիկայ պիտի յանդիմանէ ձեզ ։
11 Միթէ անոր փառքը ձեզ չը՞վախցըներ, ու անոր ահը ձեր վրայ չի՞յնար ։
12 Ձեր յիշատակութիւնները մոխիրի առակներ են, ձեր ‡մարմինները կաւէ մարմիններու պէս են ։
13 Լռեցէք իմ առջևս, ու ես խօսիմ. և ինչ որ ըլլայ՝ թող պատահի ինծի ։
14 Ինչո՞ւ համար մարմինս ակռաներուս մէջը կ'առնեմ, ու հոգիս ափիս մէջը կը դնեմ ։
15 Թէև անիկայ զիս սպաննէ, ես անոր պիտի յուսամ. միմնաւանդ

Ն. Ք. ԴՔ. ԻՐԸ 1520
Սաղ. ՂԱ. 15 ։
Գլ. ԻԱ. 7 ։ Սաղ. ԼԷ. 1, 35 ։ Հգ. 11, 12 ։ ՂԲ. 7 ։ Երեմ. ԺԲ. 1 ։ Մաղ. Գ. 15 ։
* Եբր. կը բերէ ։
Թուոց. ԺԶ. 22 ։ Դան. Ե. 23 ։ Գործ. ԺԷ. 28 ։
Գլ. ԼԴ. 3 ։
Գլ. Ջ. 30 ։
Գլ. ԼԲ. 7 ։
Գլ. Թ. 4 ։ ԼԶ. 5 ։
Գլ. ԺԱ. 10 ։
Ես. ԻԲ. 22 ։ Յայտ. Գ. 7 ։
Ա Թագ. Ը. 35 ։ ԺԷ. 1 ։
Ծն. Է. 11 ։
Հմր 13 ։
Բ Թագ. ԺԵ. 31 ։ ԺԷ. 14, 23 ։ Ես. ԺԹ. 12 ։ ԻԹ. 14 ։ Ա Կոր. Ա. 19 ։
† Կամ՝ քահանաները
Գլ. ԼԲ. 9 ։ Ես. Գ. 1, 2, 3 ։
Սաղ. ՃԷ. 40 ։ Դան. Բ. 21 ։
Դան. Բ. 22 ։ Մատ. Ժ. 26 ։ Ա Կոր. Դ. 5 ։

Ն. Ք. ԴՔ. ԻՐԸ 1520
Սաղ. ՃԷ. 38 ։ Ես. Թ. 3 ։ ԻԶ. 15 ։
Սաղ. ՃԷ. 4, 40 ։
Բ Օր. ԻԸ. 29 ։ Գլ. Ե. 14 ։
Սաղ. ՃԷ. 27 ։
Գլ. ԺԲ. 3 ։
Գլ. ԻԳ. 3 ։ ԼԱ. 35 ։
Գլ. Զ. 21 ։ ԺԶ. 2 ։
Առակ. ԺԷ. 28 ։
‡ Կամ՝ պատնէշները կաւէ պատնէշներու
Գլ. ԺԸ. 4 ։
Ա Թագ. ԻԸ. 21 ։ Սաղ. ՃԺԹ. 109 ։
Սաղ. ԻԳ. 4 ։ Առակ. ԺԴ. 32 ։
Գլ. ԻԷ. 5 ։

իմ ճամբաներս անոր առջեւը պիտի
պաշտպանեմ ։
16 Նաեւ իմ փրկութիւնս անիկայ
է . բայց կեղծաւորը բնաւ անոր
առջեւը պիտի չգայ ։
17 Աղէկ մտիկ ըրէք իմ խօսքս , ու
իմ ըսելիքս ձեր ականջներուն հաս-
նի ։
18 Ահա հիմա ես դատս կարգի դրած
եմ . գիտեմ որ պիտի արդարա-
նամ ։
19 Ո՞վ ինծի հետ պիտի վիճի .
քանզի թէ որ հիմա լռելու ըլլամ ,
պիտի մեռնիմ ։
20 Միայն թէ այս երկու բանը մի՛
ըներ ինծի , այն ատենը քու ե-
րեսէդ պիտի չպահուըտիմ ։
21 Ձեռքդ վրայէս վերցուր , ու
քու երկիւղդ զիս չզարհուրեցընէ ։
22 Ետքը դուն կանչէ , ու ես պա-
տասխան տամ . կամ թէ ես խօ-
սիմ , ու դուն ինծի պատասխան
տուր ։
23 Ո՞րչափ են իմ անօրէնութիւն-
ներս ու մեղքերս . իմ յանցանքս
ու մեղքս ինծի իմացուր ։
24 Ինչո՞ւ համար երեսդ կը պահես ,
ու զիս քեզի թշնամի կը սեպես ։
25 Հովէն քշուած տերեւի՞ մը դէմ
ահաւոր պիտի ըլլաս , կամ թէ չոր
մղե՞ղ մը պիտի հալածես ։
26 Որովհետեւ *դառնութեան վճիռ-
կու տաս" ինծի , ու իմ երիտա-
սարդութեանս անօրէնութիւննե-
րը ինծի կը ժառանգեցընես .
27 Ոտքերս կոճղի մէջ կը դնես ,
ու բոլոր ճամբաներս կը զննես , ու
իմ ոտքերուս շաւիղներուն նշան
կը դնես ։
28 Ու անիկայ փտած բանի պէս՝ ու
ցեցէն կերուած լաթի պէս կը մա-
շի ։

ԳԼ . ԺԴ

1 Յոբ շնորհք կը խնդրէ Աստուծմէ՝ կեանքին
կարճութիւնը ու մահուան ստուգութիւնը
յառաջ բերելով ։ 7 Կը խոստովանի թէ մար-
դուս հոգին անգամ մը ելլելով՝ ալ ետ չդառ-
նար . սակայն ինքը իր փոփոխութեանը կը
սպասէ ։ 16 Մարդս մեղքի պատճառաւ ա-
պականութեան ենթակայ է ։

1 Կնիկէ ծնած մարդը կարճ կեանք
ունի , ու թշուառութիւնով
լեցուն է .
2 Ծաղիկի պէս կ'ելլէ , ու կը
կտրուի , ու շուքի պէս կը փախչի
ու չկենար ։
3 Բայց անոր վրայ ալ աչքերդ կը
բանաս , ու զիս քու հետդ դա-
տաստանի՞ կը բերես ։
4 Անմաքուրէն ո՞վ կրնայ մաքուր
հանել . բնաւ մէկը չկրնար ։
5 Որովհետեւ անոր օրերը որո-
շուած են . անոր ամիսներուն թիւը
քու քովդ է . դուն անոր սահման
դրիր , ու անիկայ չկրնար անդին
անցնիլ ։
6 Երեսդ մէկդի դարձուր անկէ ,
որ անիկայ հանգչի , մինչեւ որ
վարձկանի պէս իր օրը լմնցընէ ։
7 Վասն զի թէ որ ծառը կտրուի ,
դեռ յոյս կայ , որ վերստին ծլի ,
ու շառաւիղը պակաս չըլլայ ։
8 Թէեւ անոր արմատը երկրին մէ-
ջը ծերացած ըլլայ , ու անոր բունը
հողին մէջը մեռած ,
9 Անիկայ ջուրին հոտէն կը ծաղկի ,
ու նոր տնկուած բոյսի պէս ճիւ-
ղեր կ'արձակէ ։
10 Բայց մարդը կը մեռնի , ու
կ'երթայ . մարդը իր հոգին կ'ա-
ւանդէ , ու ետքը ո՞ւր տեղ է ։
11 Ինչպէս որ ջուրերը ծովէն կը պակ-
սին , ու գետը կը չորնայ ու կը ցամքի ,
12 Այսանկ ալ մարդը կը պառկի , ու չելլեր . մինչեւ որ ալ
երկինք չըլլայ՝ պիտի չելլեն , ու ի-
րենց քունէն պիտի չարթըննան ։
13 Երանի թէ մինչեւ քու բարկու-
թեանդ անցնիլը՝ գերեզմանին մէջը
ծածկէիր ու պահէիր զիս . ինծի
ժամանակ մը որոշէիր , ու ետքը զիս
միտքդ բերէիր ։
14 Թէ որ մարդը մեռնի , պիտի ո-
ղջնա՞յ արդեօք . պատերազմիս
բոլոր օրերը պիտի սպասեմ , մին-
չեւ որ իմ փոխուելու օրս գայ ։
15 Պիտի կանչես , ու ես քեզի պա-
տասխան պիտի տամ . քու ձեռքե-
րուդ գործքին պիտի փափաքիս ։
16 Որովհետեւ հիմա քայլերս կը
համրես , մեղքս չե՞ս զններ ։
17 Իմ յանցանքս քսակի մէջ կնիք-
քուած է , ու իմ անօրէնութեանս
վրայ ‡կարկեցիր ։
18 Իրաւ որ լեռը իյնալով կը կոր-
ծանի , ու ապառաժը իր տեղէն կը
փոխադրուի ։
19 Ջուրերը կը մաշեցընեն քարերը .
յորդած ժամանակնին՝ գետնին հո-
ղերը կը քշեն կը տանին . դուն ալ
մարդուն յոյսը անանկ կը կորսըն-
ցընես ։
20 Դուն բոլորովին յաղթող կ'ըլ-
լաս անոր վրայ , ու անիկայ կ'եր-
թայ . անոր դէմքը փոխելով՝
զանիկայ կը վռնտես ։
21 Անոր տղաքը պատիւ կ'ունենան ,
ու ինքը չգիտնար . անոնք անարգ
կ'ըլլան , ու ինքը անոնց վրայօք
չիմանար ։
22 Միայն թէ իր վրայի մարմինը
ցաւ պիտի քաշէ . ու իր հոգին
պիտի տրտմի իր ներսի դին ։

ԳԼ . ԺԵ

1 Եղիփազ կը յանդիմանէ Յոբը , անոր իր անձը
արդարացընելը ամբարշտութիւն սեպելով ։

Ն . Ք . ԴԲ .
ԻՐ 1520

Բ Գլ . ԼԴ . 6 ։
Եսա . Ծ . 8 ։
Գ Գլ . Թ . 34 ։
ԼԴ . 7 ։
Դ Սաղ . ԼԹ .
10 ։
Ե Բ Օր . ԼԲ .
20 ։ Սաղ .
ԺԶ . 1 ։ Խղ .
24 ։ Ձը . 14 ։
Եսա . Ը . 17 ։
Զ Բ Օր . ԼԲ .
42 ։ Հռութ .
Ա . 21 ։ Գլ .
ԺԶ . 9 ։ ԺԹ .
11 ։ ԼԳ . 10 ։
Ողբ . Բ . 5 ։
Է Եսա . ԽԲ . 3 ։
* Եբր . դառ-
նութիւն-
ներ կը գրես
Ը Գլ . Ի . 11 ։
Սաղ . ԻԵ .
7 ։
Թ Գլ . ԼԳ . 11 ։

Ա Գլ . Ե . 7 ։
Ժողով . Բ . 23 ։
Բ Գլ . Ը . 9 ։
Սաղ . Ղ . 5 ,
6 , 9 ։ ՃԲ . 11 ։
ՃԴ . 15 ։
ՃԽԴ . 4 ։ Եսա .
Խ . 6 ։ Յակ .
Ա . 10 , 11 ։
Դ . 14 ։ Ա
Պետ . Ա .
24 ։
Գ Սաղ . ՃԽԴ .
3 ։
Դ Սաղ . ՃԽԳ .
2 ։
Ե Ծն . Ե . 3 ։
Սաղ . ԾԱ .
5 ։ Յոհ . Գ .
6 ։ Հռով .
Ե . 12 ։ Ե-
փես . Բ . 3 ։
Զ Գլ . Է . 1 ։

Ն . Ք . ԴԲ .
ԻՐ 1520

Է Գլ . Է . 16 ,
19 ։ Ժ . 20 ։
Սաղ . ԼԹ .
13 ։
Ը Գլ . Է . 1 ։
Թ Հմր 14 ։

† Կամ՝ ապա-
կանութիւն
կը տեսնէ .

Ժ Սաղ . ՃԲ .
26 ։ Եսա . ԾԱ .
6 ։ ԿԵ . 17 ։
ԿԶ . 22 ։
Գործ . Գ .
21 ։ Հռով .
Ը . 20 ։ Բ
Պետ . Գ . 7 ,
10 , 11 ։
Յայտ . Ի .
11 ։ ԻԱ . 1 ։

ԺԱ Գլ . ԺԳ . 15 ։
Հմր 7 ։
ԺԲ Գլ . ԺԳ .
22 ։

ԺԳ Գլ . Ժ . 6 ,
14 ։ ԺԳ . 27 ։
ԼԱ . 4 ։ ԼԴ .
21 ։ Սաղ .
ԾԶ . 8 ։ ՃԼԹ .
1 , 2 , 3 ։ Ա-
ռակ . Ե . 21 ։
Երեմ . ԼԲ .
19 ։
ԺԴ Բ Օր . ԼԲ .
34 ։ Ովս .
ԺԳ . 12 ։
‡ Կամ՝ աւել-
ցուցիր ։

ԺԵ Ժողով . Թ .
5 ։ Եսա . ԿԳ .
16 ։

Ն · Ք · ԳՃ · ԻԲՐ 1520

17 Աւանդութիւններով կ'ապացուցանէ չար մարդոց անհանգստութիւնը ։

1 Ան ատենը Եղիփազ Թեմանացին
պատասխան տուաւ ու ըսաւ .
2 Միթէ իմաստուն մարդը հովի
պէս * խօսքերով պատասխան պի-
տի տա՞յ , ու իր փորը արեւելեան
հովով պիտի լեցնէ՞ ։
3 Պարապ խօսքերով պիտի վիճա-
բանի՞ , ու անանկ զրոյցներով՝ ո-
րոնք օգուտ մը չունին ։
4 Մանաւանդ դուն երկիւղը կը
խափանես , ու Աստուծոյ մատու-
ցուելու աղօթքը կ'արգիլես ։
5 Որովհետեւ բերանդ քու անօրէ-
նութիւնդ կը ցուցնէ . ու նեն-
գաւորաց լեզուն ընտրեցիր ։
6 ա Քու բերանդ քեզ պիտի դա-
տապարտէ , ու չէ թէ ես , եւ քու
շրթունքներդ քեզի դէմ պիտի
վկայեն ։
7 Առջի ծնած մարդը դո՞ւն ես .
բ կամ բլուրներէն առա՞ջ ստեղ-
ծուեցար ։
8 գ Աստուծոյ գաղտնեացը ունկն-
դի՞ր եղար . եւ իմաստութիւնը
միայն քեզի՞ պահեցիր ։
9 դ Ի՞նչ գիտես դուն՝ որ մենք
չենք գիտեր . ի՞նչ բանի տեղեկու-
թիւն ունիս , որ մենք չունինք ։
10 ե Մեջերնիս ճերմակ մազերով՝ ու
խիստ ծեր մարդիկ ալ կան , որոնք
տարիքով քու հօրմէդ աւելի մեծ
են ։
11 Միթէ քի՞չ կը թուին քեզի
Աստուծոյ մխիթարութիւնները ,
† ու քեզի ըսուած մեղմ խօսքերը ։
12 Քու սիրտդ ո՞ւր կը տանի քեզ ,
ու աչքերդ ի՞նչ բանի կ'ակնար-
կեն ,
13 Որ հոգիդ Աստուծոյ դէմ դար-
ձրնելով՝ բերնէդ անանկ խօսքեր կը
հանես ։
14 զ Մարդը ի՞նչ է՝ որ մաքուր ըլ-
լայ , ու կնիկէ ծնածը՝ որ արդարա-
նայ ։
15 է Ահա Աստուած իր սուրբերուն
չհաւատար . ու երկինքը անոր աչ-
քերուն առջեւ մաքուր չէ .
16 ը Ո՞ւր կը մնայ գարշելի ու պիղծ
մարդը՝ թ որ անօրէնութիւնը ջուրի
պէս կը խմէ ։
17 Քեզի իմացրնեմ , մտի՛կ ըրէ ին-
ծի , ու տեսածս պատմեմ քեզի .
18 Ի՛նչ որ իմաստունները յայտնե-
ցին , ու բնաւ չծածկեցին ժ իրենց
հայրերէն առածնին ։
19 ( Երկիրը անոնց միայն տրուե-
ցաւ , ու ի անոնց մէջէն օտարական
մը չանցաւ ։ )
20 Չարը իր բոլոր օրերուն մէջ
տանջանք կը կրէ . լ ու բռնաւորին
քիչ տարիներ պահուած է ։

* Եբր · դի-տութիւ-նով ։
ա Ղու · ժթ · 22 ։
բ Սաղ · ղ · 2 ։ Առակ · ը · 25 ։
գ Հռով · ժա · 34 ։ ա Կոր · բ · 11 ։
դ Գլ · ժգ · 2 ։
ե Գլ · լբ · 6 , 7 ։
† Կամ՝ Ծածուկ բան մը ունի՞ս արդեօք ։
զ Գ Թագ · ը · 46 ։ բ Մն · զ · 36 ։ Գլ · ժդ · 4 ։ Սաղ · ժդ · 3 ։ Առակ · ի · 9 ։ Ժող · է · 20 ։ ա Յօհ · ա · 8 , 10 ։
է Գլ · դ · 18 ։ իե · 5 ։
ը Գլ · գ · 19 ։ Սաղ · ժգ · 3 ։ ծդ · 3 ։
թ Գլ · լդ · 7 ։ Առակ · ժթ · 28 ։
ժ Գլ · ը · 8 ։
ի Յովել · գ · 17 ։
լ Սաղ · ղ · 12 ։

21 Վախերուն ձայնը անոր ականջին
է . ի խաղաղութեան մէջ՝ անոր
վրայ կործանիչը պիտի գայ .
22 Չհաւատար որ մութէն պիտի
ելլէ . ու անիկայ սուրի պահուած
է ։
23 ծ Հացը ո՞ւր է ըսելով՝ թափառա-
կան կը պտըտի . գիտէ որ կ մութ
օրը պատրաստ է՝ ու իր ձեռքն է ։
24 Նեղութիւնը ու տառապանքը
զանիկայ կը վախցրնեն , ու պատե-
րազմի պատրաստուած թագաւորի
պէս անոր վրայ յաղթող կ'ըլլան ։
25 Ինչու որ Աստուծոյ դէմ ձեռք
վերցուց , ու Ամենակարողին դէմ
հպարտացաւ ։
26 Անոր վրայ կը յարձակի ‡ գոռո-
զութեամբ , ու իր ասպարներուն
թանձր գմբեթներովը ։
27 Որովհետեւ իր երեսը ճարպով
ծածկեց , ու երիկամունքները պա-
րարտութիւնով գոցեց ։
28 Եւ անիկայ աւերակ քաղաքնե-
րու մէջ բնակեցաւ , ու կործանե-
լու մօտեցած անշէն տուներու մէջ ։
29 Անիկայ պիտի չհարստանայ . ա-
նոր ստացուածքները հաստատ պի-
տի չըլլան . ու անոնց շատութիւնը
երկրիս վրայ պիտի չտարածուի ։
30 Մութէն պիտի չդառնայ . բոցը
պիտի չորցրնէ անոր ճիւղերը , ու
հ Աստուծոյ բերնին շունչովը պիտի
ոչնչանայ ։
31 Խաբուելով ձ ունայնութեան
չվստահի . վասն զի անոր փոխա-
րէնը՝ ունայնութիւն պիտի ըլլայ ։
32 ղ Օրերը չլմընցած՝ պիտի կտրուի ,
ու ճիւղերը նորէն պիտի չկանանչին .
33 Որթի պէս իր ազոխը պիտի թա-
փէ , ու ձիթենիի պէս իր ծաղիկ-
ները պիտի թօթափէ ։
34 Ինչու որ կեղծաւորներուն ժո-
ղովը ամայի պիտի ըլլայ , ու կա-
շառք առնողներուն վրանները՝ կը-
րակը պիտի այրէ ։
35 ճ Անոնք թշուառութիւն կը յղա-
նան , անօրէնութիւն կը ծնանին ,
ու սրտերնին խաբէութիւն կը
պատրաստէ ։

Ն · Ք · ԳՃ · ԻԲՐ 1520
խ ա Թես · ե · 3 ։
ծ Սաղ · ծթ · 15 ։ ճթ · 10 ։
կ Գլ · ժը · 12 ։
‡ Եբր · պարանոցով ։
հ Գլ · դ · 9 ։
ձ Ես · ծթ · 4 ։
ղ Գլ · իբ · 16 ։ Սաղ · ծե · 23 ։
ճ Սաղ · է · 14 ։ Ես · ծթ · 4 ։ Ովս · ժ · 13 ։

## ԳԼ · ԺԶ

1 Յոբ իր բարեկամները կը յանդիմանէ՝ զանոնք անգութ անուանելով . 7 իր վիճակին թշուառութիւնը կը ցուցնէ . 17 իր անմեղութիւնը կը հաստատէ ։

1 Ու Յոբ պատասխան տուաւ՝ ու
ըսաւ .
2 Ես ասոնց պէս շատ բաներ լսած
եմ . ա ամէնքդ ալ ձանձրութիւն
տուող մխիթարիչներ էք ։
3 Դատարկ խօսքերը ծայր ունի՞ն .
եթէ ոչ՝ ի՞նչ բանէ գրգռուած պա-
տասխան կու տաս ։

ա Գլ · ժգ · 4 ։

Ն. Ք. ԱՌ. իւր 1520

4 Ես ալ ձեզի պէս կրնայի խօսիլ. թէ որ ձեր անձը իմ անձիս տեղը ըլլար, կրնայի ձեզի դէմ խօսքեր դիզել, ու բ ձեզի դէմ գլուխս երերցնել։

բ Սաղ. իբ. 7; ծթ. 25; Ողբ. բ. 15։

5 Սակայն իմ բերնովս ձեզ կը զօրացընէի. ու շրթունքներուս շարժումը ձեր տրտմութիւնը կը փարատէր։

6 Թէ որ խօսիմ՝ տրտմութիւնս չփարատիր, և թէ որ լռեմ, ի՞նչ կը պակսի ինծմէ։

7 Բայց հիմա զիս յոգնեցուց. բոլոր *տունս ամայի ըրիր.

8 Նաև զիս †խորշոմութիւններով ծածկեցիր", ու ասիկայ ինծի դէմ վկայութիւն մըն է. ու իմ նիհարութիւնս ինծի դէմ ելլելով՝ երեսիս վրայ վկայութիւն կ'ընէ։

* Եբր. ժողովս
† Կամ՝ բռնեցիր։

9 գ Անոր բարկութիւնը զիս պատռեց, ու ինծի թշնամի եղաւ. ակռաները իմ վրաս կրճտցուց. դ Թշնամիս սուր աչքերով ինծի նայեցաւ։

գ Գլ. Ժ. 16, 17։
դ Գլ. ԺԳ. 24։

10 ե Բերաննին վրաս բացին, ու զիս նախատելու համար զ ծնօտներուս ապտակ զարկին. է Միատեղ վրաս ժողվուեցան։

ե Սաղ. իբ. 13։
զ Ողբ. գ. 30; Միք. ե. 1։
է Սաղ. լե. 15։

11 Աստուած ը զիս ամբարշտին յանձնեց, ու անօրէններուն ձեռքը ձգեց։

ը Գլ. ա. 15, 17։

12 Հանգիստ էի, ու զիս ճնշեց, ու վիզէս բռնելով՝ զիս ջախջախեց, ու թ զիս իրեն նշան դրաւ։

թ Գլ. է. 20։

13 Անոր աղեղնաւորները իմ բոլորտիքս առին. երիկամունքներս կը խոցէ, ու ինծի չխնայեր. լեղիս գետինը կը թափէ։

14 Կոտորածի վրայ կոտորած ընելով՝ զիս կոտրեց. իմ վրաս զօրաւորի մը պէս յարձակեցաւ։

15 Մորթիս վրայ քուրձ կարեցի, ու ժ եղջիւրս ‡հողով աղտոտեցի։

16 Երեսս լալէն ‖ուռեցաւ. ու աչքիս թարթիչներուն վրայ մահուան շուք կայ.

ժ Գլ. Լ. 19; Սաղ. է. 5։
‡ Կամ՝ հողի մէջ
‖ Կամ՝ կարմրեցաւ.

17 Թէև ձեռքերուս մէջը անօրէնութիւն չկայ, ու աղօթքս մաքուր է։

18 Ո՛վ երկիր՝ իմ արիւնս մի՛ ծածկեր, ու ի աղաղակիս տեղ չըլլայ։

ի Գլ. իէ. 9; Սաղ. կզ. 18, 19։

19 Հիմա ալ ահա լ իմ վկաս երկինքին մէջն է, ու փաստաբանս բարձր տեղուանքն է։

լ Հռովմ. ա. 9։

20 Զիս ծաղր ընողները իմ բարեկամներս են. աչքերս Աստուծոյ առջևը արցունք կը թափեն։

21 խ Երանի թէ մարդս կարենար Աստուծոյ հետ վիճաբանիլ, ինչպէս մարդը իր ընկերին հետ։

խ Գլ. լա. 35; Ժող. զ. 10; Ես. խե. 9; Հռովմ. թ. 20։

22 Ինչու որ քիչ տարիներ անցնելէն ետքը՝ ծ անանկ ճամբայ մը պիտի երթամ, ուսկից որ ալ պիտի չդառնամ։

ծ Ժող. ժբ. 5։

## ԳԼ. ԺԷ

1 Յոբ մարդոց ձեռքէն Աստուծոյ կը բողոքէ։ 6 Մարդոց՝ տառապեալներուն հետ սնգթութեամբ վարուիլը թէև արդարը կ'ապշեցընէ, բայց չյուսահատեցըներ։ 11 Յոբ կ'ըսէ նաև՝ թէ իր յոյսը կեանքի վրայ չէ, հապա մահուան վրայ։

1 Հոգիս կը նուաղի, օրերս կը մարին, ա գերեզմանը ինծի կը սպասէ։

ա Սաղ. ձբ. 3, 4։

2 Չէ՞ որ ծաղր ընողներ կան իմ քովս. ու աչքս անոնց բ վիճմունքովը գիշերը կ'անցընէ։

բ Ա Թագ. ա. 6, 7։

3 Ա՛ղէ քու քովդ ինծի երաշխաւոր մը դիր. գ Ո՞վ կայ որ իմ ձեռքս բռնէ։

գ Առակ. զ. 1; ժէ. 18; իբ. 26։

4 Ինչու որ դուն իմաստութիւնը անոնց սրտէն ծածկեցիր. անոր համար պիտի չբարձրացընես զանոնք։

5 Ո՛վ որ իր §բարեկամները կողոպտուելու կը մատնէ", անոր տղոցը աչքերը պիտի նուաղին։

§ Կամ՝ բարեկամներուն շողոքորթութիւն կ'ընէ,

6 Զիս ժողովուրդներուն դ առակ ըրաւ. անոնց առջևը զզուելի եղայ։

դ Գլ. Լ. 9։

7 Նաև ե աչքերս տրտմութենէն շլացաւ, ու մարմնոյս բոլոր անդամները շուքի պէս եղան։

ե Սաղ. զ. 7; լա. 9։

8 Ուղիղները աս բանիս վրայ պիտի զարմանան, և անմեղները պիտի արթըննան կեղծաւորին դէմ։

9 Ու արդարը հաստատ պիտի կենայ իր ճամբուն մէջը, և զ մաքուր ձեռք ունեցողը՝ երթալով պիտի զօրանայ։

զ Սաղ. իդ. 4։

10 Բայց դուք ամէնքդ ալ է դարձէք ու եկէք. ինչու որ ձեր մէջը իմաստուն չեմ գտներ։

է Գլ. զ. 29։

11 ը Իմ օրերս անցան. իմ դիտաւորութիւններս ու սրտիս խորհուրդները խափանեցան։

ը Գլ. է. 6; թ. 25։

12 Գիշերը ցորեկի փոխուեցաւ, ու լոյսը **խաւարին մօտեցաւ"։

** Կամ՝ խաւարին առջևէն կարճ եղաւ։

13 Միայն գերեզմանին կը սպասեմ, որ իմ տունս պիտի ըլլայ. անկողինս մթութեան մէջ փռեցի։

14 Ապականութեանը աղաղակեցի՝ Դուն իմ հայրս ես. և որդերուն՝ Դուն իմ մայրս ու քոյրս ես։

15 Ու հիմա ո՞ւր է իմ յոյսս. իմ յոյսս ո՞վ պիտի տեսնէ։

16 թ Գերեզմանին առանձնութեանը մէջ պիտի իջնէ, երբոր ժ միատեղ հողին մէջը հանգստանանք։

թ Գլ. ժը. 13։
ժ Գլ. գ. 17, 18, 19։

## ԳԼ. ԺԸ

1 Բաղդատ կը յանդիմանէ Յոբը՝ զանիկայ ինքնահաւան ու անհամբեր սնուանելով։ 5 Չարերուն թշուառութիւնները։

1 Ան ատենը Բաղդատ Սօքեցին պատասխան տուաւ՝ ու ըսաւ.

Ն. Ք. ՉՔ. Իրր 1520

2 Ե՞րբ ձեր խօսքերը պիտի հատցընէք. հասկըցէ՛ք, ու անկէ ետքը խօսինք։
3 Ինչո՞ւ համար ᵃանասնոց պէս համարուինք, ու աչքերնուդ առջին անմաքուր սեպուինք։
4 (ᵇԻր բարկութիւնովը զինքը կը պատառէ.) միթէ երկիրը քեզի համար երեսի վրայ պիտի ձգուի՞, ու ապառաժը իր տեղէն պիտի փոխադրուի՞։
5 Անշուշտ ᶜամբարշտին լոյսը պիտի մարի, ու անոր կրակին բոցը լոյս պիտի չտայ.
6 Անոր վրանին մէջ լոյսը պիտի խաւարի, ᵈու անոր ճրագը՝ անոր վրայ պիտի մարի։
7 Անոր զօրութեանը քայլերը նեղութիւն պիտի կրեն, ու ᵉանոր խորհուրդը զանիկայ գետինը պիտի զարնէ։
8 Ինչու որ ᶠիր ոտքերովը ուռկանի մէջ պիտի բռնուի, ու ցանցի վրայ պիտի քալէ։
9 Վարմը անոր գարշապարը պիտի բռնէ. ու ᵍաւարառուն անոր պիտի յաղթէ։
10 Անոր համար գետնին մէջը թակարդ պահուած է, ու անոր ճամբուն վրայ որոգայթ։
11 ʰԱրհաւիրքը զանիկայ ամէն կողմէն պիտի պաշարէ, ու զանիկայ իր ոտքերովը աստին անդին պիտի վազցընէ։
12 Անոր զօրութիւնը պիտի անօթենայ, ու ⁱկորուստը անոր քովը պատրաստ է,
13 Որ անոր մորթին ոյժը պիտի ուտէ. մահուան առջինեկը պիտի ուտէ անոր ոյժը։
14 ʲԱնոր վստահութիւնը իր վրանէն պիտի կտրուի. ու անիկայ դէպ 'ի զարհուրանաց թագաւորը պիտի քշուի։
15 Անոր վրանին մէջը [illegible] պիտի բնակի, որ [illegible] իրը պիտի չըլլայ. ու անոր բնակարանին վրայ ծծումբ պիտի ցանուի։
16 ᵏԱնոր արմատները տակէն պիտի չորնան, ու վերէն ճիւղերը պիտի կտրուին։
17 ˡԱնոր յիշատակը երկրէն պիտի կորսուի, ու անոր անունը հրապարակներուն մէջը պիտի չգըրուցուի։
18 Անիկայ լոյսէն խաւարը պիտի քշուի, ու անիկայ աշխարհէն պիտի վռընտուի։
19 ᵐԻր ժողովուրդին մէջ ոչ զաւակ պիտի ունենայ և ոչ թոռ. ու անոր բնակութիւններուն մէջ մէկը պիտի չմնայ։
20 *Ետքինները ⁿանոր օրուանը վրայ պիտի զարմանան, ու †առաջինները պիտի սոսկան։
21 Արդարեւ ամբարշտին բնակարանները ասանկ պիտի ըլլան, ու ᵒզԱստուած չճանչցողին տեղը ասանկ է։

ᵃ Սաղ. ՀԳ. 22։
ᵇ Գլ. ԺԳ. 14։
ᶜ Առակ. ԺԳ. 9։ Ի. 20։ ԻԴ. 20։
ᵈ Գլ. ԻԱ. 17։ Սաղ. ԺԸ. 28։
ᵉ Գլ. Ե. 13։
ᶠ Գլ. ԻԲ. 10։ Սաղ. Թ. 15։ ԼԵ. 8։
ᵍ Գլ. Ե. 5։
ʰ Գլ. ԺԵ. 21։ Ի. 25։ Երեմ. Զ. 25։ Ի. 3։ ԽԶ. 5։ ԽԹ. 29։
ⁱ Գլ. ԺԵ. 23։
ʲ Գլ. Ը. 14։ ԺԱ. 20։ Սաղ. ՃԺԲ. 10։ Առակ. Ժ. 28։
ᵏ Գլ. ԻԹ. 19։ Եսա. Ե. 24։ Ամով. Բ. 9։ Մաղ. Դ. 1։
ˡ Սաղ. ԼԴ. 16։ ՃԹ. 13։ Առակ. Բ. 22։ Ժ. 7։
ᵐ Եսա. ԺԴ. 22։ Երեմ. ԻԲ. 30։
* Կամ՝ Արեւմուտք բնակողները
ⁿ Սաղ. ԼԷ. 13։
† Կամ՝ Առաջուընե բնակողները
ᵒ Երեմ. Թ. 3։ Ժ. 25։ Ա Թես. Դ. 5։ Բ Թես. Ա. 8։ Տիտ. Ա. 10։

## ԳԼ. ԺԹ

1 Յոբ իր բարեկամներուն անգթութենէն կը գանգատի. 21, 28 կը խնդրէ որ իր վրայ գութ ունենան։ 23 Մեռելոց յարութիւն առնելը կը խոստովանի։

1 Ու Յոբ պատասխան տուաւ ու ըսաւ.
2 Մինչեւ ե՞րբ հոգիս պիտի վշտացընէք, ու զիս խօսքերով պիտի ճնշէք։
3 Արդէն ᵃտասը անգամ է որ զիս կը մեղադրէք. չէք ամչնար որ զիս կ'ապշեցընէք։
4 Եւ թէ որ յիրաւի ես սխալեր եմ, իմ սխալմունքս իմ քովս կը մնայ։
5 Թէ որ անպատճառ ᵇամբարտաւանութեամբ խօսիլ կ'ուզէք ինծի դէմ, ու ամօթս երեսս զարնել,
6 Գիտցէ՛ք ուրեմն որ զիս Աստուած կործանեց, ու իր ցանցը իմ վրաս դարձուց։
7 Ահա ինծի եղած անիրաւութեանը համար կ'աղաղակեմ, ու պատասխան տուող չկայ. կը բողոքեմ, բայց դատաստան չկայ։
8 ᶜԱնիկայ իմ ճամբաս գոցեց, անանկ որ չեմ կրնար անցնիլ. իմ շաւիղներուս վրայ խաւար դրաւ։
9 ᵈԶիս իմ փառքէս մերկացուց, ու գլխէս թագը վերցուց։
10 Զիս ամէն կողմէն աւրեց, ու ես գացի, ու իմ յոյսս ծառի մը պէս՝ արմատէն խլեց։
11 Անոր բարկութիւնը իմ վրաս բորբոքեցաւ, ու ᵉզիս իր թշնամիներուն կարգը դրաւ։
12 Անոր գունդերը մէկտեղ եկան, ᶠու ճամբանին ինծի դէմ պատրաստեցին, ու վրանիս բոլորտիքը բանակեցան։
13 ᵍԱնիկայ իմ եղբայրներս ինծմէ հեռացուց. ու իմ ծանօթներս օտարացան ինծմէ։
14 Ազգականներս ալ թողուցին, ու իմ ճանչուորներս զիս մոռցան։
15 Իմ տունս բնակողները ու աղախիններս զիս անծանօթ մէկ մը սեպեցին. ու անոնց աչքին առջեւ օտարական եղայ։
16 Ծառաս կանչեցի, ու անիկայ պատասխան չտուաւ, թէեւ բերնովս անոր աղաչեցի։
17 Իմ շունչս ատելի եղաւ կնոջս, ու իմ աղաչանքներս՝ իմ մօրս որովայնին որդւոցը։
18 ʰՓոքր տղաքն ալ զիս կ'անարգեն,

Ն. Ք. ՉՔ. Իրր 1520

ᵃ Ծն. ԼԱ. 7։ Ղեւ. ԻԶ. 26։
ᵇ Սաղ. ԼԸ. 16։
ᶜ Գլ. Գ. 23։ Սաղ. ՁԸ. 8։
ᵈ Սաղ. ՁԹ. 44։
ᵉ Գլ. ԺԳ. 24։ Ողբ. Բ. 5։
ᶠ Գլ. Լ. 12։
ᵍ Սաղ. ԼԱ. 11։ ԼԸ. 11։ ԿԹ. 8։ ՁԸ. 8, 18։
ʰ Դ Թագ. Բ. 23։

Ն. Ք. գԲ. իբր 1520

ու երբոր կ'ելլեմ , կը բամբասեն
զիս ։
19 ր Բոլոր մտերիմ բարեկամներս
ինծմէ զզուեցան , ու իմ սիրական-
ներս ինծի դէմ դարձան ։
20 ժ Ոսկորներս՝ մորթիս ու մարմ-
նոյս փական . միայն ակռաներուս
կաշիովը ազատեցայ ։
21 Ո՜վ իմ բարեկամներս՝ դո՛ւք ո-
ղորմեցէք ինծի , ողորմեցէք ինծի .
ի քանզի Աստուծոյ ձեռքը ինծի
դպաւ ։
22 Ինչո՞ւ Աստուծոյ պէս զիս Լ կը
հալածէք , ու մարմինէս չէք կշտա-
նար ։
23 Երանի՜ թէ հիմա խօսքերս գը-
րուէր . երանի՜ թէ գիրքի մը մէջ
քանդակուէին .
24 Երկաթէ գրիչով կապարի վրայ ,
ու քարի վրայ յաւիտեան փորա-
գրուէին ։
25 Վասն զի գիտեմ որ իմ * Փրկիչս
ողջ է ; ու անիկայ վերջին ժամա-
նակը պիտի ելլէ † երկրի վրայ ։
26 Ու թէև մորթէս ետքը՝ աս ալ
քանդուի , բայց խ իմ մարմնովս
զԱստուած պիտի տեսնեմ ,
27 Որն որ ես ինծի համար պիտի
տեսնեմ , ու իմ աչքերս պիտի դի-
տեն զանիկայ , և ո՛չ թէ ուրիշի-
նը . երիկամունքներս իմ ներսի դիս
կը հալին ։
28 Պէտք էր ըսէիք . ծ Ինչո՞ւ կը հա-
լածենք զանիկայ . որովհետև բա-
նին արմատը իմ վրաս գտնուեցաւ ։
29 Սուրէն վախցէք . ինչու որ բար-
կութեան պատիժը սուրն է , կ որ
գիտնաք թէ դատաստան կայ ։

ր Սաղ. խա. 9 ; ծե. 13, 14, 20 ;
ժ Գլ. Լ. 30 ; Սաղ. ճբ. 5 ; Ողբ. դ. 8 ;
ի Գլ. ա. 11 ; Սաղ. լը. 2 ;
Լ Սաղ. կթ. 26 ;
* Կամ՝ Վրէժխնդիրս
† Եբր. հողի
խ Սաղ. ժէ. 15 ; ա Կոր. ժգ. 12 ; ա Յոհ. գ. 2 ;
ծ Հմր 22 ;
կ Սաղ. ծը. 10, 11 ;

## ԳԼ. Ի

1—29 Սոփար՝ չարերուն վիճակը ու բաժինը կը ցուցընէ ։

1 Ու տէնը Սոփար Նաամացին
պատասխան տուաւ ու ըսաւ .
2 Ասոր համար իմ կարծիքս ինծի
պատասխան տալ կու տայ , ու ա-
սոր համար կ'արտորամ ։
3 Զիս խայտառակող յանդիմա-
նութիւնը լսեցի . բայց իմ հոգիս՝
իմ հանճարս իմաստութենէս պատաս-
խան տալ կը ստիպէ զիս ։
4 Դուն ասիկայ գիտե՞ս՝ որ 'ի յա-
ւիտենից մարդս երկրի վրայ դրուե-
լէն 'ի վեր ,
5 ա Անզգամին յաղթութիւնը քիչ
ժամանակ կը տևէ , ու կեղծաւորին
ուրախութիւնը մէկ վայրկեանի
համար է ։
6 բ Թէև անոր փառաւորութիւնը
մինչև երկինքը ելլէ , ու գլուխը
ամպերուն հասնի ,
7 գ Իր աղբին պէս յաւիտեան պի-

ա Սաղ. լէ. 35, 36 ;
բ Ես. ժդ. 13, 14 ; Աբդ. 3, 4 ;
գ Սաղ. ծգ. 10 ;

տի ոչնչանայ , ու զինքը տեսնող-
ները պիտի ըսեն . Ո՞ւր է անիկայ ։
8 դ Երազի պէս պիտի թռչի , ու
պիտի չգտնուի . ու գիշերուան
ցնորքի պէս պիտի փախչի ։
9 ե Զանիկայ տեսնող աչքը՝ ալ
պիտի չտեսնէ . ու անոր բնակած
տեղը՝ ալ պիտի չնայի անոր ։
10 Անոր զաւակները ‡ աղքատներէն
շնորհք պիտի խնդրեն , ու անոր
ձեռքերը իր ‖ յափշտակածը ետ
պիտի տան .
11 Անոր ոսկորները՝ զ իր § երիտա-
սարդութեան մեղքերովը լեցուն է . ու անոր հետ հողին
մէջը պիտի պառկի ։
12 Թէ որ անզգամութիւնը անոր
բերնին մէջ քաղցր է , և թէ որ իր
լեզուին տակը կը պահէ զանիկայ ,
13 Թէ որ զանիկայ խնայէ ու չձգէ ,
ու իր քիմացը մէջ պահէ զանիկայ ,
14 Կերակուրը անոր աղիքներուն
մէջ պիտի փոխուի . անոր ներսի
դին՝ քարբի լեղի պիտի ըլլայ ։
15 Անիկայ հարստութիւններ կուլ
տուաւ , բայց պիտի փսխէ զանոնք .
ու Աստուած անոր փորէն դուրս
պիտի հանէ զանոնք ։
16 Անիկայ քարբին թոյնը պիտի
ծծէ , ու զանիկայ իժի լեզուն պի-
տի մեռցընէ ։
17 թ Անիկայ պիտի չտեսնէ վտակնե-
րը , մեղրի ու կոգիի հեղեղներուն
գետերը ։
18 Իր աշխատանքով վաստըկածը
ժ ետ պիտի տայ ու պիտի չկլլէ , ու
ետ տուածը՝ իր հարստութեանը
չափ պիտի ըլլայ , ու անոր վրայ պի-
տի չուրախանայ ։
19 Որովհետև աղքատները ճնշեց ,
ու երեսի վրայ թողուց , ու իր չշի-
նած տունը յափշտակեց .
20 ի Անշուշտ իր ներսի դին խաղա-
ղութիւն պիտի չզգայ , ու ցանկա-
ցածը պիտի չկրնայ ազատել ։
21 Անոր ուտելու բան մը պիտի չմը-
նայ , անոր համար անոր յաջողու-
թիւնը հաստատ պիտի չըլլայ ։
22 Առատութեամբ լեցուն եղած
ժամանակն ալ՝ նեղութեան մէջ
պիտի ըլլայ . թշուառութեան մէջ
եղողներուն ամէն * հարուածը ա-
նոր վրայ պիտի գայ ։
23 Երբոր փորը կշտացընելու վրայ
կ'ըլլայ , Աստուած իր սաստիկ բար-
կութիւնը անոր վրայ պիտի խրկէ .
ու անձրևի պէս անոր վրայ պիտի
թափէ՝ Լ կերակուր ուտելու ատե-
նը ։
24 խ Երկաթէ զէնքին առջևէն փա-
խած ատենը՝ պղնձէ աղեղը զանի-
կայ պիտի խոցէ ։
25 Անոր դէմ արձակուածը՝ մարմինը

դ Սաղ. հգ. 20 ; Դ. 5 ;
ե Գլ. է. 8, 10 ; Ը. 18 ; Սաղ. լէ. 36 ; ճգ. 16 ;
‡ Եբր. աղքատները պիտի հաճեցընեն ,
‖ Կամ՝ հարստութիւնը
զ Հմր 18 ;
է Գլ. ժգ. 26 ; Սաղ. իե. 7 ;
§ Կամ՝ ծածուկ
ը Գլ. իա. 26 ;
թ Սաղ. լզ. 9 ; Երեմ. ժէ. 6 ;
ժ Հմր 10, 15 ;
ի Ժող. ե. 13, 14 ;
* Եբր. ձեռքը տնանգ. իգ. 2 ;
Լ Թուոց. ժա. 33 ; Սաղ. հը. 30, 31 ;
խ Ես. իդ. 18 ; Երեմ. խը. 43, 44 ; Ամովս. ե. 19 ;

պիտի թափանցէ, ու [ծ]փայլուն սուրը անոր մաղձէն դուրս ելլէ. անոր վրայ [կ]արհաւիրք դուրս գայ։

26 Բոլոր խաւարը անոր գաղտուկ տեղուանքը պիտի պահուի. [հ]չփչուած կրակը զանիկայ պիտի լափէ. անոր վրանը մնացողը *ապերջանիկ պիտի ըլլայ"։

27 Երկինքը անոր յանցանքը պիտի յայտնէ, երկիրն ալ անոր դէմ պիտի ելլէ։

28 Անոր տանը եկամուտը պիտի յափշտակուի. ամէն բան պիտի անցնի Աստուծոյ բարկութեան օրը։

29 [յ]Ասիկայ է ամբարիշտ մարդուն բաժինը՝ որ Աստուծմէ դուրս [illegible]. և ասիկայ է ան ժառանգութիւնը՝ որ Աստուած անոր համար սահմաներ է։

Ն. Ք. Գ. Ք. Իրր 1520

[ծ] Գլ. ժզ. 13։ [կ] Գլ. ժը. 11։ [հ] Սաղ. իա. 9։ * Կամ՝ պիտի սպառէ։ [յ] Գլ. իէ. 13 ; լա. 2, 3։

## ԳԼ. ԻԱ

1 Յոբ կը հաստատէ թէ ինքը իրաւունք ունի տրտմելու։ 7 Երբեմն չարերը այնքան յաջողութեան մէջ կ'ըլլան, մինչև որ զԱստուած կ'արհամարհեն։ 16 Երբեմն անոնց կործանումը յայտնի կերպով կ'ըլլայ։ 22 Երջանիկը ու ապերջանիկը մեռած ատեննին հաւասար են։ 27 Չարերուն դատաստանը գալու աշխարհին մէջ պիտի տեսնուի։

1 Ու Յոբ պատասխան տուաւ ու ըսաւ.

2 Խօսքս աղէկ մտիկ ըրէք, ու աս ըլլայ ձեր մխիթարութիւնը։

3 Ինծի համբերեցէք, ու ես խօսիմ, ու խօսելէս ետքը [ա]ծաղր ըրէք։

4 Միթէ ես մարդո՞ւ հետ կը վիճիմ. և ինչո՞ւ համար հոգիս չըտրտմի։

5 Ինծի նայեցէք, ու ապշեցէ՛ք, [բ]ու բերաննուդ վրայ ձեռք դրէք։

6 Այս բաները մտածելով՝ կը զարհուրիմ, ու մարմինս կը սկսի դողալ։

7 [գ]Ամբարիշտները ինչո՞ւ կ'ապրին. կը ծերանան, ու խիստ կ'ուժովնան։

8 Անոնց սերունդը հետերնին կը հաստատուի իրենց առջևը, և անոնց զաւակները աչքերնուն առջին։

9 Տուներնին խաղաղութեան մէջ է, ու վախէն ազատ. [դ]և Աստուծոյ գաւազանը անոնց վրայ չէ։

10 Անոնց ցուլը կը զուգաւորուի, ու դատարկը չելլեր. կովը իր որթը կը ծնանի, ու [ե]չվիժեր։

11 Իրենց պզտիկները ոչխարի հօտի պէս կը հանեն. ու անոնց տղաքը ուրախութեամբ կը ցատկըտեն։

12 Թմբուկով ու քնարով ձայն կը վերցընեն, ու սրինգին ձայնովը ուրախ կ'ըլլան։

13 Անոնք [զ]օրերնին զուարճութիւնով կ'անցընեն, ու մէկ վայրկեանի մէջ գերեզմանը կ'իջնեն։

14 [է]Ու Աստուծոյ կ'ըսեն. Քաշուէ՛ մեզմէ, ինչու որ քու ճամբաներդ գիտնալ չենք ուզեր.

15 [ը]Ամենակարողը ո՞վ է՝ որ անոր ծառայենք. ու թէ որ անոր աղօթք ընենք, [թ]ի՞նչ օգուտ պիտի ունենանք։

16 Ահա անոնց բարիքը ձեռքերնին չէ. [ժ]ամբարշտին խորհուրդը ինծմէ հեռու ըլլայ։

17 [ի]Ամբարիշտներուն ճրագը քանի՛ անգամ կը մարի, ու տառապանքը անոնց վրայ կու գայ. Աստուած [լ]իր բարկութեամբը անոնց ցաւեր կը բաժնէ։

18 [խ]Հովին առջևը եղած յարդին պէս ու մրրկին յափշտակած շիւղին պէս կ'ըլլան։

19 Աստուած անոր անիրաւութիւնը [ծ]անոր որդւոցը կը պահէ. անոր փոխարէն պիտի հատուցանէ, ու ան ալ պիտի գիտնայ։

20 Անոր աչքերը իր կորուստը պիտի տեսնեն, ու [կ]Ամենակարողին բարկութենէն պիտի խմէ։

21 Անիկայ ի՞նչ զուարճութիւն պիտի ունենայ իրմէ ետքը մնացած տունէն, որովհետև իր ամիսներուն թիւը կտրուած է։

22 [հ]Միթէ Աստուծոյ գիտութիւն սորվեցընել ճա՞ր է, անոր՝ որ բարձրերը կը դատէ։

23 Մէկը կը մեռնի իր առողջութեանը մէջ, բոլորովին հանդարտ և հանգիստ.

24 Անոր [+]քովերը ճարպով լեցուն են, ու ոսկորներուն ծուծը թարմ է։

25 Ու մէկ ուրիշը կը մեռնի հոգիի ցաւով, ու առանց բարիքով կըշտանալու.

26 Ասոնք երկուքն ալ մէկտեղ [յ]հողին մէջը կը պառկին, ու որդերը կը ծածկեն զանոնք։

27 Ահա գիտեմ ձեր խորհուրդները, ու ինծի դէմ հնարած անիրաւութիւնները։

28 Ինչու որ կ'ըսէք. [ն]Ո՞ւր է նախարարին տունը, և ո՞ւր է ամբարիշտներուն բնակած վրանը։

29 Ճամբորդներուն չհարցուցի՞ք, ու անոնց նշանները չէ՞ք հասկնար։

30 [շ]Ինչու որ չարը՝ կորստեան օրուան կը պահուի, ու բարկութեան օրուան կը տարուի։

31 [ո]Անոր երեսին դէմ ո՞վ պիտի յանդիմանէ անոր ճամբան. և անոր ըրածին փոխարէնը ո՞վ անոր պիտի հատուցանէ։

32 Բայց ան ալ գերեզմանը պիտի

[ա] Գլ. ժզ. 10 ; ժէ. 2։ [բ] Դատ. ժը. 19 ; Գլ. իթ. 9 ; խ. 4 ; Սաղ. լթ. 9։ [գ] Գլ. ժբ. 6 ; Սաղ. ժէ. 10, 14 ; հգ. 3, 12 ; Երեմ. ժբ. 1 ; Ամբ. ա. 16։ [դ] Սաղ. հգ. 5։ [ե] Ել. իգ. 26։ [զ] Գլ. լզ. 11։

Ն. Ք. Գ. Ք. Իրր 1520

[է] Գլ. իբ. 17։ [ը] Ել. ե. 2 ; Գլ. լդ. 9։ [թ] Գլ. լե. 3 ; Մաղ. գ. 14։ [ժ] Գլ. իբ. 18 ; Սաղ. ա. 1 ; Առակ. ա. 10։ [ի] Գլ. ժը. 6։ [լ] Ղու. ժբ. 46։ [խ] Սաղ. ա. 4 ; լե. 5 ; Ես. ժէ. 13 ; իթ. 5 ; Ովս. ժգ. 3։ [ծ] Ել. ի. 5։ [կ] Սաղ. հե. 8 ; Ես. ծա. 17 ; Երեմ. իե. 15 ; Յայտ. ժդ. 10 ; ժթ. 15։ [հ] Ես. խ. 13 ; խե. 9 ; Հռով. ժա. 34 ; ա Կոր. բ. 16։ + Կամ՝ անօթները կաթով։ [յ] Գլ. ի. 11 ; Ժող. թ. 2։ [ն] Գլ. ի. 7։ [շ] Առակ. ժզ. 4 ; բ Պետ. բ. 9։ [ո] Գաղ. բ. 11։

Ն. Ք. ԶՔ. Իբր 1520

տարուի, ու տապանին մէջը պիտի մնայ ։

33 Ձորին հողի կոշտերը անոր անուշ պիտի գայ . ու ամէն մարդ անոր ետեւէն պիտի երթայ . իսկ անոր առջեւէն գացողներուն հաշիւը չկայ ։

(ա Եբր. Թ. 27 ։)

34 Ուրեմն ի՞նչպէս փուճ մխիթարութիւններ կու տաք ինծի . որովհետեւ ձեր պատասխաններուն մէջ ստութիւն կայ ։

## ԳԼ. ԻԲ

1 Եղիփազ կը ցուցնէ թէ մարդուն աղէկութիւնը Աստուծոյ օգուտ մը չունի ։ 5 Զանազան մեղքերու համար Յոբը կը յանդիմանէ . 21 զանիկայ կը յորդորէ որ զղջայ, ու Աստուծոյ ողորմութիւնը անոր կը խոստանայ ։

1 Ան ատենը Եղիփազ Թեմանացին պատասխան տալով՝ ըսաւ .

2 բՄիթէ մարդը կրնա՞յ Աստուծոյ օգտակար ըլլալ . խելացի մարդը միայն իրեն օգուտ կ'ընէ ։

(բ Գլ. ԼԵ. 7 ։ Ղու. ԺԷ. 10 ։)

3 Ամենակարողին հաճութիւն մը կ'ըլլա՞յ, թէ որ արդար ըլլաս, կամ մէկ շահ մը՝ թէ որ քու ճամբաներդ շիտկես ։

4 Միթէ քեզմէ վախնալով քեզի հետ վիճաբանութիւն կ'ընէ՞ . քեզի հետ դատաստանի կը մտնէ՞ ։

5 Չէ՞ որ քու անզգամութիւնդ մեծ է, ու անօրէնութիւններդ անհամար են ։

6 Որովհետեւ եղբայրներէդ առանց պատճառի գգրաւ առիր, ու մերկերուն հանդերձները յափշտակեցիր .

(գ Ել. ԻԲ. 26, 27 ։ բ Օր. ԻԴ. 10, &c. Գլ. ԻԴ. 3, 9 ։ Եզեկ. ԺԸ. 12 ։)

7 Ծարաւածին ջուր չխմցուցիր, ու դհացը՝ անօթիէն խնայեցիր .

(դ Տես Գլ. Լա. 17 ։ բ Օր. ԺԵ. 7, &c. Ես. ԾԸ. 7 ։ Եզեկ. ԺԸ. 7, 16 ։ Մատ. ԻԵ. 42 ։)

8 Բայց երկիրը զօրաւորինն էր . ու անոր մէջը պատուաւորը կը բնակէր ։

9 Որբեւարի կնիկները դատարկ խրկեցիր . ու եորբերուն թեւերը կոտրեցաւ ։

(ե Գլ. Լա. 21 ։ Ես. Ժ. 2 ։ Եզեկ. ԻԲ. 7 ։)

10 Անոր համար քու բոլորտիքդ զորոգայթներ լարուած են, ու յանկարծահաս վախը քեզ կը զարհուրեցնէ ։

(զ Գլ. ԺԸ. 8, 9, 10 ։ ԺԹ. 6 ։)

11 Կամ տեսնել խաւար մը քեզ պատեր է՝ որ չես կրնար տեսնել . ու էջուրերուն շատութիւնը քեզ կը ծածկէ ։

(է Սաղ. ԿԹ. 1, 2 ։ ՃԻԴ. 4 ։ Ողբ. Գ. 54 ։)

12 Աստուած երկինքին խիստ բարձր տեղը չէ՞ . հիմա աստղերուն *բարձրութեանը նայէ, որչափ բարձր են ։

(* Եբր. գլուխն)

13 Ու դուն ըսիր . ըԻ՞նչ գիտէ Աստուած . մառախուղին մէջէն դատաստա՞ն պիտի ընէ .

(ը Սաղ. Ժ. 11 ։ ԾԹ. 7 ։ ՀԳ. 11 ։ ՂԴ. 7 ։)

14 թԱմպերը անոր առջեւ ծածկոյթ են, ու չտեսներ . ու անիկայ երկնից կամարին վրայ կը պտըտի ։

(թ Սաղ. ՃԼԹ. 11, 12 ։)

15 † Ուշադրութիւն ըրի՞ր՝ ան ‡ հին ճամբային՝, որ անօրէն մարդիկը պտըտեցան .

(† Կամ՝ Պիտի՞ տեսնեմ ‡ Կամ՝ հին աշխարհին ճամբային,)

16 Որոնք ժյանկարծակի յափշտակուեցան, ու անոնց հիմերը հեղեղը ընկղմեց ։

(ժ Գլ. ԺԵ. 32 ։ Սաղ. ԾԵ. 23 ։ Ճռ. 24 ։ Ժող. Է. 17 ։)

17 իԱնոնք կ'ըսէին Աստուծոյ . Հեռացի՛ր մեզմէ . ու լԱմենակարողը ‖ մեզի ի՞նչ պիտի ընէ .

(ի Գլ. ԻԱ. 14 ։ լ Սաղ. Դ. 6 ։ ‖ Եբր. անոնց)

18 Թէեւ անոնց տունը բարութիւնով լեցուցեր էր ։ խԱնզգամներուն խորհուրդը ինծմէ հեռու ըլլայ ։

(խ Գլ. ԻԱ. 16 ։)

19 ծԱրդարները պիտի տեսնեն ու ուրախ ըլլան . ու անմեղները զանոնք ծաղր պիտի ընեն, ըսելով .

(ծ Սաղ. ԾԸ. 10 ։ ՃԷ. 42 ։)

20 Մեր թշնամիները կորսուած չե՞ն, ու անոնց մնացորդը կրակը չկերա՞ւ ։

21 Արդ Անոր հետ բարեկամ եղիր, ու կխաղաղութիւն ունեցիր . ու ասկէ քեզի օգուտ կ'ըլլայ ։

(կ Ես. ԻԷ. 5 ։)

22 Անոր բերնէն օրէնքը ընդունէ, ու հանոր խօսքերը սիրտդ դիր ։

(հ Սաղ. ՃԺԹ. 11 ։)

23 ձԹէ որ Ամենակարողին դառնաս դուն պիտի § հաստատուիս . անօրէնութիւնը քու վրաններէդ հեռացուր .

(ձ Գլ. Ը. 5, 6 ։ ԺԱ. 13, 14 ։ § Եբր. շինուիս .)

24 Ու ոսկին հողին ** վրայ պիտի դնես, ու Ոփիրի ոսկին՝ հեղեղատներու քարերուն ** վրայ .

(ղ ԲՄն. Ա. 15 ։ ** Կամ՝ պէս)

25 Եւ Ամենակարողը քու ոսկիդ ըլլալով, քու զօրութեանդ արծաթը պիտի ըլլայ ։

26 Ինչու որ ան ատենը ճԱմենակարողէն ուրախութիւն պիտի ունենաս, ու մերեսդ դէպ 'ի Աստուած պիտի վերցնես .

(ճ Գլ. ԻԷ. 10 ։ Ես. ԾԸ. 14 ։ մ Գլ. ԺԱ. 15 ։)

27 յԱնոր պիտի աղաչես, ու քեզի պիտի լսէ . ու քու ուխտերդ պիտի կատարես ։

(յ Սաղ. Ծ. 14, 15 ։ Ես. ԾԸ. 9 ։)

28 Թէ որ դիտաւորութիւն մը ունենաս, քեզի պիտի յաջողի . ու ճամբաներուդ վրայ լոյս պիտի ճառագայթէ ։

29 Երբոր ձեռք ցածնայ, ու դուն ըսես . †† Թող բարձրանայ՝, ան աստենը նպիտի ազատէ զանիկայ՝ որ աչքերով խոնարհած էր ։

(†† Եբր. Բարձրութիւն ։ ն Առակ. ԻԹ. 23 ։ Յակ. Դ. 6 ։ ա Պետ. Ե. 5 ։)

30 շԱնմեղ չեղողն ալ պիտի ազատէ . ու քու ձեռքերուդ մաքրութիւնովը պիտի ազատուի ։

(շ Տես Ծն. ԺԸ. 26, &c.)

## ԳԼ. ԻԳ

1 Յոբ կը փափաքի Աստուծոյ առջեւ երեւնալու՝ 6 անոր ողորմութեանը ապաւինելով ։ 8 Աստուած թէեւ անտեսանելի է, սակայն մեր ճամբաները կը գիտէ ։ 11 Յոբին անմեղութիւնը ։ 13 Աստուծոյ վճիռը անփոփոխելի է ։

1 Ու Յոբ պատասխան տուաւ ու ըսաւ .

2 Այսօր ալ իմ գանգատս դառն է, ‡‡ հարուածս հառաչանքէս ծանր է ։

(‡‡ Եբր. Ձեռքս)

3 ոԵրանի թէ կարող ըլլայի գըտ-

(ո Գլ. ԺԳ. 3 ։ ԺԶ. 21 ։)

Ն. ք. գք. իբր 1520

նել զԱնիկայ . մինչև անոր աթոռը կ'երթայի .
4 Իմ դատս անոր առջևը կը տարածէի, ու բերանս փաստերով կը լեցնէի ։
5 Կը գիտնայի թէ ինծի ինչ պատասխան կու տար, ու կը լսէի ինչ որ ինծի կ'ըսէր ։
Բ Եսա. իե. 4, Տ. ծէ. 16 ։
6 Միթէ Իր ուժին շատութիւնովը ինծի հետ պիտի վիճէ՞ր . չէ . հապա ինքը զիս պիտի զօրացընէր ։
7 Ուղիղ մարդը հոն կրնայ վիճաբանիլ անոր հետ . ու ես յաւիտեան իմ Դատաւորէս կ'ազատէի ։
Գ Գղ. Թ. 11 ։
8 Բայց ահա դէպ 'ի արևելք կ'երթամ, ու անիկայ չերևնար, և դէպ 'ի արևմուտք, ու զանիկայ չեմ նշմարեր .
9 Դէպ 'ի հիւսիս կ'երթամ, ուր որ ինքը կը գործէ, բայց զանիկայ չեմ կրնար դիտել . հարաւային կողմը կը պահուի, ու չեմ կրնար տեսնել զանիկայ ։
Դ Սաղ. ճլթ. 1, 2, 3 ։ Ե Սաղ. ժէ. 3 ։ կղ. 10 ։ Յակ. ա. 12 ։
10 Իսկ անիկայ գիտէ իմ ճամբաս . երբոր զիս փորձէ, ոսկիի պէս պիտի ելլեմ ։
Զ Սաղ. խդ. 18 ։
11 Ոտքս անոր քայլերուն վրայ հաստատուեցաւ . անոր ճամբան պահելով՝ չմոլորեցայ ։
Է Յոհ. դ. 32, 34 ։
12 Անոր շրթունքներուն պատուիրանքներէն չդատուեցայ . անոր բերնին խօսքերը իմ պիտոյքէս աւելի պահեցի ։
13 Բայց անիկայ մէկ միտքի վրայ է, և ո՞վ կրնայ զանիկայ դարձընել . ու իր սրտին ուզածը կ'ընէ ։
Ը Գղ. Թ. 12, 13 ։ Ժբ. 14 ։ Հռով. Թ. 19 ։
14 Ուրեմն ինծի համար սահմանուածը պիտի կատարէ . ու ասոր պէս շատ բաներ կան անոր քովը ։
Թ Սաղ. ճժե. 3 ։ Ժ աթեսս. գ. 3 ։
15 Անոր համար անոր ներկայութենէն կը շփոթիմ, ու երբոր կը մտածեմ, անկէ կը վախնամ ։
Ի Սաղ. իբ. 14 ։
16 Ինչու որ Աստուած իմ սիրտս կը կակուղցընէ, ու Ամենակարողը զիս կը շփոթէ ։
17 Որովհետև ես [illegible] խաւարէն առաջ չմեռայ . ու մութը առջևէս չծածկեց ։

## ԳԼ. ԻԴ

1 Չարութիւնը շատ անգամ անպատիժ կը մընայ ։ 17 Չարերուն համար գաղտնի դատաստան մը կայ ։

Ա Գործ. ա. 7 ։
1 Ինչպէս Ամենակարողէն պահուած չեն ժամանակները, ու զանիկայ ճանչցողները անոր օրերը չեն տեսներ ։
Բ Բ Օր. ժթ. 14 ։ իէ. 17 ։ Առակ. իբ. 28 ։ իգ. 10 ։ Ովս. ե. 10 ։
2 Չարերը սահմանները կը փոխեն, հօտեր կը յափշտակեն, ու զանոնք կ'արածեն ։
Գ Գղ. իբ. 6 ։ Բ Օր. իդ. 6, 10, 12, 17 ։
3 Որբերուն էշերը [illegible] կը տանին, որբևայրիին եզը գրաւ կ'առնեն .

Ն. ք. գք. իբր 1520

4 Աղքատները ճամբայէն կը մոլորցընեն . ու երկրին տնանկները մէկտեղ կը պահուին ։
Դ Առակ. իը. 28 ։
5 Ահա անոնք անապատի վայրենի էշերուն պէս՝ իրենց գործքին կ'ելլեն, կանուխ որս փնտռելու կ'երթան . անապատը անոնց տղոցը հաց կու տայ ։
6 Իրենցը չեղած արտը կը հնձեն, ու անիրաւութեամբ այգի կ'աւրեն ։
Ե Ել. իբ. 26, 27 ։ Բ Օր. իդ. 12, 13 ։ Գղ. իբ. 6 ։
7 Գիշերը առանց հանդերձի կը պառկեցընեն մերկը, ու ցուրտ ժամանակին առանց ծածկոցի կը թողուն ։
8 Անոնք լեռներուն սաստիկ անձրևներէն կը թրջուին, ու ապաստանարան մը չունենալնուն համար՝ ժայռերը կը գրկեն ։
Զ Ողբ. դ. 5 ։
9 Որբը ծիծէն կը փրցընեն, ու աղքատէն գրաւ կ'առնեն ։
10 Մերկերը առանց հանդերձի կը պտըտցընեն . ու անօթիները անոնց ցորենի խուրձերը կը կրեն ։
11 Իրենց պատերուն մէջը եղ հանողները՝ ու հնձաններուն մէջ գինի կոխողները ծարաւ կը մնան ։
12 Քաղաքին մէջէն մարդիկները կը հեծեն, ու վիրաւորուածներուն հոգին կ'աղաղակէ . բայց Աստուած անոնց ըրածը անզգամութիւն չհամարիր ։
13 Անոնք լոյսին դէմ կեցողներէն են . անոր ճամբաները չեն գիտեր, ու անոր շաւիղներուն մէջը չեն կենար ։
Է Սաղ. Ժ. 8 ։
14 Մարդասպանը՝ լուսնալուն պէս կ'ելլէ, աղքատը ու տնանկը կը սպաննէ, ու գիշերը գողի պէս կ'ըլլայ ։
Ը Առակ. է. 9 ։ Թ Սաղ. Ժ. 11 ։
15 Շնացողին աչքն ալ իրիկուան մութին կը սպասէ՝ ըսելով . Զիս աչք չտեսնէ . ու երեսին ծածկոց կը դնէ ։
16 Մութ ատեն կը ծակեն այն տուները՝ որոնց վրայ ցորեկուընէ նշան դրած են . անոնք լոյսը չեն ճանչնար .
Ժ Յոհ. գ. 20 ։
17 Ինչու որ առտուան լոյսը մահուան շուքի պէս է անոնց . որովհետև մահուան շուքին երկիւղներուն սորված են ։
18 Անիկայ ջուրին երեսին վրայ թեթև է . անոնց բաժինը երկրի վրայ անիծեալ է . ու այգիներուն ճամբան չդառնար ։
19 Չորութիւնը ու տաքութիւնը՝ ձիւնին ջուրը կը հատցընեն, ու գերեզմանը՝ մեղք գործողները ։
20 Որովայնը զանիկայ պիտի մոռնայ . որդերը պիտի ուտեն զանիկայ՝ անուշ բանի պէս . ու ալ անիկայ պիտի չյիշուի . ամբարշտու-
Ի Առակ. Ժ. 7 ։

Ն. Ք. ՂՔ. Իրր 1520

թիւնը ծառի մը պէս պիտի կոտրուի ։
21 Անիկայ զաւակ չծնանող ամուլը կը չարչարէ , ու որբեւարիին աղէկութիւն չըներ ։
22 Անիկայ իր ուժովը զօրաւորներն ալ վեր կը քաշէ ․ ան երբոր ելլէ , մէկուն կեանքը ապահով չէ ։
23 Աստուած անոր ապահովութիւն կու տայ , որ անոր վստահի , բայց ւիր աչքերը՝ անոնց ճամբաներուն վրայ է ։
24 Քիչ մը բարձրացան , ու ոչինչ եղան ․ ամենուն պէս կորսուելով ընկղմեցան , ու հասկի գլխու պէս կտրուեցան ։
25 Թէ որ ասանկ չէ , ո՞վ զիս սուտ կը հանէ , և իմ խօսքս ոչինչ ըլլալ կը ցուցնէ ։

ւ Սաղ. ժա. 4։ Առակ. ժե. 3։

## ԳԼ. ԻԵ

1—6 Բաղդատ կը հաստատէ թէ մարդս չկրնար Աստուծոյ առջեւը արդարանալ ։

1 Ու Բաղդատ Սօքեցին պատասխան տուաւ ու ըսաւ .
2 Իշխանութիւնը ու վախը Անոր քովն է ․ իր բարձր տեղերուն մէջ խաղաղութիւն կ՚ընէ ։
3 Անոր զունդերուն համրանքը կա՞յ արդեօք ․ ու —անոր լոյսը որո՞ւն վրայ չծագիր ։
4 ԲՈւրեմն մարդը ի՞նչպէս պիտի արդարանայ Աստուծոյ առջեւը , ու կնիկէ ծնածը ի՞նչպէս կրնայ մաքուր ըլլալ ։
5 Ահա լուսինն ալ լոյս չտար ․ ու Անոր աչքերուն առջեւ աստղերն ալ մաքուր չեն .
6 Ալ ո՞ւր կը մնայ մարդը՝ որ Եմէկ որդ մըն է , ու մարդու որդին՝ որ մէկ ճճի մըն է ։

— Յակ. ա. 17։
Բ Գլ. դ. 17, Ճ։ ժե. 14, Ճ։ Սաղ. ճլ. 3։ Ճխգ. 2։
Ե Սաղ. իբ. 6։

## ԳԼ. ԻԶ

1 Յոբ՝ Բաղդատին անգութ ոգին յանդիմանելով՝ Աստուծոյ կարողութիւնը անհուն ու անքննելի ըլլալ կը խոստովանի ։

1 Ան ատենը Յոբ պատասխան տուաւ ու ըսաւ .
2 Տկարին ի՞նչ շատ օգնութիւն ըրիր ․ և ոյժ չունեցող բազուկը ի՞նչպէս զօրացուցիր ։
3 Յիմարին ի՞նչ խրատ տուիր , ու ի՞նչ շատ իմաստութիւն ցուցուցիր ։
4 Դուն որո՞ւն ըսիր այս խօսքերը , ու որո՞ւն շունչը ելաւ քեզմէ ։
5 Ոգիները վարէն կը դողան , նաեւ ջուրերը ու անոնց բնակիչները ։
6 —Դժոխքը բաց է Անոր առջին , ու կորուստը անծածկոյթ է
7 ՔԱնիկայ հիւսիսը պարապ տեղին վրայ կը տարածէ , ու երկիրը ոչինչին վրայ կը կախէ ։
8 գՋուրերը՝ իր մութ ամպերուն մէջը կը ծրարէ ․ ու անոնց տակէն ամպը չպատռիր ։
9 Իր աթոռին երեսը կը պահէ ․ անոր վրայ իր ամպը կը տարածէ ։
10 դՋուրերուն երեսին վրայ ամէն կողմէն սահմաններ դրաւ , մինչեւ լոյսին ու խաւարին ծայրը ։
11 Երկինքին սիւները կը սարսին , ու անոր յանդիմանութենէն կ՚ապշին ։
12 եԻր զօրութեամբը ծովը *կը խաղաղեցնէ , ու իր գիտութեամբը՝ հպարտութիւնը կը զարնէ ։
13 զԻր Հոգիովը երկինքը զարդարեց ․ անոր ձեռքը՝ էփախչող Վիշապը ստեղծեց ։
14 Ահա ասոնք են անոր ճամբաներուն ծայրերը ․ բայց անոր վրայով լսածնիս որչափ քիչ է ․ և ո՞վ կրնայ իմանալ անոր զօրութեանը որոտումը ։

— Սաղ. ճլթ. 8, 11։ Առակ. ժե. 11։ Եբր. դ. 13։
Ք Գլ. թ. 8։ Սաղ. իդ. 2։ Ճդ. 2, Ճ։

Ն. Ք. ՂՔ. Իրր 1520
գ Առակ. ը. 4։
դ Գլ. լը. 8։ Սաղ. լգ. 7։ Ճդ. 9։ Առակ. ը. 29։ Երեմ. ե. 22։
ե Ել. ժդ. 21։ Սաղ. հդ. 13։ Ես. ծա. 15։ Երեմ. լա. 35։
* Կամ՝ կը վախցնէ ,
զ Սաղ. լգ. 6։
է Ես. իէ. 1։

## ԳԼ. ԻԷ

1 Յոբ իր անկեղծութիւնը կը հաստատէ , 8 ու կեղծաւորին առանց յուսոյ ըլլալը կը ցուցընէ ։ 11 Չարերուն ունեցած բարիքները չարիքներու կը դառնան ։

1 Ու Յոբ դարձեալ իր առակը սկսելով՝ ըսաւ .
2 ըԻմ իրաւունքս մէկդի դնող Աստուածը՝ ու թՀոգիս դառնութեամբ լեցնող Ամենակարողը կենդանի է .
3 Քանի որ շունչս վրաս է , ու ռնգացս մէջ ժԱստուծոյ հոգին կայ ,
4 Շրթունքներս անիրաւ բան մը պիտի չզրուցեն , ու լեզուս նենգութիւն պիտի չխօսի ։
5 Քաւ լիցի ինծի՝ որ ձեզ արդարացընեմ ․ մինչեւ մեռնիլս՝ իիմ ուղղութիւնս ձեռքէ պիտի չձգեմ ։
6 Իմ արդարութիւնս լհաստատ բռներ եմ , ու զանիկայ պիտի չթողում , — կեանքիս †մէջ խսիրտս բնաւ պիտի չյանդիմանէ զիս ։
7 Իմ թշնամիս ամբարշտի պէս ըլլայ , ու ինծի դէմ ելլողը անզգամի պէս ։
8 ծՔանզի կեղծաւորին յոյսը ի՞նչ է , ( ‡թէեւ հարստութիւն ալ դիզած ըլլայ" , ) երբոր Աստուած անոր հոգին առնէ .
9 կՄիթէ Աստուած անոր աղաղակը պիտի լսէ՞ , երբոր անոր վրայ փորձանք գայ ։
10 հԱնիկայ Ամենակարողին վրայ պիտի ուրախանա՞յ ․ ամէն ժամանակ Աստուծոյ պիտի աղաղակէ՞ ։
11 Աստուծոյ ձեռքին մէջ եղածը ձեզի պիտի սորվեցընեմ ․ Ամենա-

ը Գլ. լդ. 5։
թ Հռութ. ա. 20։
ժ Ծն. բ. 7։
ի Գլ. բ. 9։ ժգ. 15։
լ Գլ. բ. 3։
† Կամ՝ համար
խ Գոր. իդ. 16։
ծ Մատ. ժզ. 26։ Ղու. ժբ. 20։
‡ Կամ՝ երբոր մեռնի .
կ Գլ. լե. 12։ Սաղ. ժը. 41։ Ճթ. 7։ Առակ. ա. 28։ իը. 9։ Ես. ա. 15։ Երեմ. ժդ. 12։ Եզեկ. ը. 18։ Միք. գ. 4։ Յով. թ. 31։ Յակ. դ. 8։
հ Տես Գլ. իբ. 26, 27։

Ն. Ք. Ծ. իբր 1520

կարողին քովը եղածը պիտի չծածկեմ ։

12 Ահա դուք ամէնքդ ալ տեսաք, ու ինչու այդպէս բոլորովին ունայնացեր էք ։

13 ժ Ասիկայ է ամբարիշտ մարդուն բաժինը Աստուծոյ առջին, ու բռնաւորներուն՝ Ամենակարողէն առնելու ժառանգութիւնը ։

ժ Գլ. Ի. 29։

14 ի Եթէ անոր տղաքը շատնան, սուրի համար է. ու անոր սերունդը հացով պիտի չկշտանայ ։

ի Բ Օր. ԻԸ. 41։ Եսթ. Թ. 10։ Ովս. Թ. 13։

15 Անոր մնացորդները մահուամբ պիտի թաղուին, բայց լ անոր որբեւարիները պիտի չլան ։

լ Սաղ. ՀԸ. 64։

16 Թէեւ հողի պէս արծաթ դիզէ, ու տիղմի պէս հանդերձներ պատրաստէ,

17 Անիկայ պիտի պատրաստէ, բայց խ արդարը պիտի հագնի, ու անմեղը՝ արծաթը պիտի բաժնէ ։

խ Առակ. ԻԸ. 8։ Ժող. Բ. 26։

18 Իրեն տուն մը կը շինէ ցեցի պէս, ու այգիի պահապանին շինած ծ խրճիթին պէս ։

ծ Ես. Ա. 8։ Ողբ. Բ. 6։

19 Հարուստը կը պառկի ու չամփոփուիր. * աչքերը կը բանայ ու" ոչինչ կ'ըլլայ ։

* Կամ՝ ակնթարթի մէջ

20 կ Արհաւիրքը ջուրերու պէս անոր պիտի հասնի. գիշերով փոթորիկը պիտի յափշտակէ զանիկայ ։

կ Գլ. ԺԸ. 11։

21 Արեւելեան հովը պիտի բշէ զանիկայ, ու ան պիտի երթայ. ու փոթորիկի պէս զանիկայ իր տեղէն պիտի վերցնէ ։

22 Աստուած իր նետերը անոր դէմ պիտի նետէ, ու պիտի չխնայէ. ան ալ անոր ձեռքէն փախչելու պիտի ջանայ ։

23 Անոր համար ծափ պիտի զարնեն, ու անոր իր տեղէն անոր դէմ պիտի սուլեն ։

## ԳԼ. ԻԸ.

1 Յոբ կը ցուցնէ թէ մարդիկ բնական բաներուն վրայով գիտութիւն ունին. 12 բայց իմաստութիւնը՝ Աստուծոյ մէկ գերազանց պարգեւն է ։

1 Արդարեւ արծաթը իր երակը ունի, ու ոսկին իր զտուելու տեղը ։

2 Երկաթը հողէն կ'առնուի, հանքը կը հալի ու պղինձ կ'ըլլայ ։

3 Մարդը խաւարին վախճան կը դնէ, ու ամէն բան կատարելապէս կը քննէ, պինդ ծածուկ պահուած քարերը՝ որ մահուան ստուերին մէջն են ։

4 Իր բնակած տեղին քովէն փոս կը բանայ. ոտք չկոխած՝ կը կախուին, ու մարդոցմէ հեռու կ'երերան ։

5 Երկրէն հաց կ'ելլէ, ու անոր տակը կրակի նման բաներ կը գտնուին.

6 Անոր քարերը շափիւղաներու տեղ են, ու հոն ոսկիի աւազ կայ ։

7 Յափշտակող թռչունը անոր շաւիղը չճանչցաւ, ու անգղին աչքը զանիկայ չտեսաւ ։

8 † Վայրենի գազանները" հոն ոտք կոխած չեն, առիւծը անկէ անցած չէ ։

† Եբր. Հպարտութեան որդիքը

9 Մարդը իր ձեռքը կ'երկնցնէ ապառաժներուն, ու լեռները հիմէն կը տապալէ.

10 Ապառաժները ճեղքելով՝ անոնց մէջէն վտակներ կ'անցընէ. ու ամէն թանկագին բաները անոր աչքը կը տեսնէ ։

11 Գետերը վազելէն կ'արգիլէ, ու գաղտուկ եղածը երեւան կը հանէ ։

12 ա Բայց իմաստութիւնը ո՞ւր կը գտնուի, ու հանճարին տեղը ո՞ւր է ։

ա Հմր 20։ Ժող. Է. 24։

13 Մարդը անոր բ յարգը չգիտեր. ու կենդանեաց երկրին մէջ չգտնուիր ։

բ Առակ. Գ. 15։

14 գ Անդունդը կ'ըսէ. Անիկայ իմ մէջս չէ. ու ծովը կ'ըսէ. Իմ քովս չէ ։

գ Հմր 22։

15 դ Զուտ ոսկիով ծախու չառնուիր, ու անոր արժէքին համար արծաթ չկշռուիր ։

դ Առակ. Գ. 13, 14, 15։ Ը. 10, 11, 19։ ԺԶ. 16։

16 Ո՛չ Ոփիրի ոսկիով կը փոխուի, ո՛չ ալ պատուական եղնգնաքարով ու շափիւղայով ։

17 Ոսկին ու ակնվանին չեն կրնար անոր հաւասարիլ, ու զուտ ոսկիէ ամանները անոր փոխանակ չեն ըլլար ։

18 Բուստը ու բիւրեղը անոր քով չեն յիշուիր, ու իմաստութեան գինը՝ ‡ յակինթներու գինէն աւելի բարձր է ։

‡ Կամ՝ բուստերու

19 Եթովպիայի տպազիոնին գինը անոր հաւասար չգար, ու զուտ ոսկիով չփոխուիր ։

20 ե Ուրեմն իմաստութիւնը ուսկից կու գայ, ու հանճարին տեղը ո՞ւր է.

ե Հմր 12։

21 Որովհետեւ բոլոր ապրողներուն աչքերէն ծածկուած՝ ու երկինքի թռչուններէն պահուած է ։

22 զ Կորուստը ու մահը կ'ըսեն. Մենք անոր համբաւը մեր ականջներովը լսեր ենք ։

զ Հմր 14։

23 Անոր ճամբան Աստուած կը հասկնայ, ու անոր տեղը ինքը գիտէ.

24 Քանզի մինչեւ երկրիս ծայրերը կը նայի, ու է բոլոր երկնից տակը եղածը կը տեսնէ ։

է Առակ. ԺԵ. 3։

25 ը Երբոր հովին կշիռ կը դնէր, ու ջուրերը չափով կը չափէր,

ը Սաղ. ՃԼԵ. 7։

26 Երբոր թ անձրեւին օրէնք՝ ու որոտումներուն փայլակին ճամբայ կ'որոշէր,

թ Գլ. ԼԸ. 25։

27 Ան ատենը տեսաւ զանիկայ՝ ու

Ն. Ք. ԴՔ. ԻՐՐ 1520

ժ Բ Օր. Դ. 6 ։ Սաղ. ճժա. 10 ։ Առակ. ա. 7 ։ Թ. 10 ։ Ժող. ժբ. 13 ։

ա Տես ԳԼ. Է. 3 ։

բ ԳԼ. ԺԸ. 6 ։ Սաղ. ԺԸ. 28 ։

գ Սաղ. ԻԵ. 14 ։

դ Ծն. ԽԹ. 11 ։ Բ Օր. ԼԲ. 13 ։ ԼԳ. 24 ։ ԳԼ. Ի. 17 ։

ե Սաղ. ԾԱ. 16 ։

զ ԳԼ. ԽԱ. 5 ։

ե Սաղ. ՃԼԷ. 6 ։

ը Սաղ. ՀԲ. 12 ։ Առակ. ԻԱ. 13 ։ ԻԴ. 11 ։

Թ Բ Օր. ԻԴ. 13 ։ Սաղ. ՃԼԲ. 9 ։ Եսա. ԾԹ. 17 ։ ԿԱ. 10 ։ Եփես. Զ. 14 ։ Ա Թես. Ե. Տ ։

Ժ Թուէ. Ժ. 31 ։

ի Առակ. ԻԹ. 7 ։

լ Սաղ. ԾԸ. 6 ։ Առակ. Լ. 14 ։

խ Սաղ. Լ. 6 ։

Ծ ԳԼ. ԺԸ. 16 ։

կ Սաղ. Ա. 3 ։ Երեմ. ԺԷ. Տ ։

յայտնեց . պատրաստեց զանիկայ՝
ու նաև քննեց .

28 Ու մարդուն ըսաւ . Ահա՛ Տէ-
րոջը վախն է իմաստութիւնը , ու
չարութենէ ետ քաշուիլը հանճարն
է ։

ԳԼ . ԻԹ

1-25 Յոբ իր առջի յաջողութեանը ու պատուոյն վրայ կ'ողբայ ։

1 Նու Յոբ նորէն իր առակը սկսելով՝
ըսաւ .
2 Երանի՛ թէ ա առջի ամիսներուն
պէս՝ Աստուծոյ զիս պահած օրե-
րուն պէս ըլլայի .
3 բ Երբոր անոր ճրագը իմ գլխուս
վրայ լոյս կու տար , ու ես խաւա-
րի մէջ անոր լուսովը կը քալէի .
4 Երիտասարդութեանս օրերը ե-
ղածիս պէս՝ երբոր գ Աստուծոյ մը-
տերմութիւնը իմ վրանիս մէջն էր .
5 Երբոր Ամենակարողը տակաւին
ինծի հետ էր , ու տղաքս իմ բոլոր-
տիքս էին ,
6 Երբոր իմ ճամբաներս դ կոգիով
կը թրջէի , ու ե ապառաժէն ինծի
համար ձէթի հեղեղներ կը վա-
զէին ,
7 Երբոր դռնէն քաղաքը կ'ելլէի ,
ու աթոռս հրապարակին մէջ կը
դնէի ,
8 Երիտասարդները զիս տեսնելով
կը պահուէին , ու ծերերը ոտք կ'ել-
լէին կը կայնէին .
9 Իշխանները խօսելէն կը դադա-
րէին , ու զ ձեռքերնին իրենց բեր-
նին վրայ կը դնէին .
10 Ազնուականները ձայներնին կը
կտրէին . է անոնց լեզուն իրենց
քիմացը կը փակչէր ։
11 Ինծի մտիկ ընող ականջը՝ Երանի՛
կ'ըսէր ինծի , ու զիս տեսնող աչքը՝
վկայութիւն կու տար ինծի .
12 Ինչու որ ես՝ ը աղաղակող աղքա-
տը , և որբը ու օգնութիւն չունե-
ցողը կ'ազատէի ։
13 Կորսուելու վրայ եղողին օրհնու-
թիւնը վրաս կու գար , ու որբևա-
րիին սիրտը կ'ուրախացընէի ։
14 թ Արդարութիւն կը հագնէի , ա-
նիկայ էր իմ հանդերձս . ու դա-
տաստանը ինծի պատմուճանի ու
խոյրի պէս էր ։
15 Կոյրին ժ աչքեր էի , ու կաղին
ոտքեր .
16 Աղքատին հայր էի , ու ի չգիտ-
ցած դատաստանս կը քննէի ։
17 Անիրաւին լ ժանիքը կը կոտրէի ,
ու անոր ակռաներէն որսը կը թըէի .
18 Ու կ'ըսէի . խ Բոյնիս մէջը պիտի
մեռնիմ , ու օրերս աւազի պէս պի-
տի շատցընեմ ։
19 Ծ Արմատս կ դէպ 'ի ջուրերը կը
տարածուէր , ու ցօղը բոլոր գիշե-
րը ոստերուս վրայ էր ։
20 Փառքս իմ վրաս կը նորոգուէր ,
ու ճ աղեղս ձեռքիս մէջը կ'ուժով-
նար ։
21 Մարդիկ ինծի մտիկ կ'ընէին ու
կը սպասէին , ու երբոր իմ խոր-
հուրդս կ'ըսէի , լուռ կը կենային ։
22 Իմ զրուցելէս ետքը՝ անոնք չէին
կրկներ , ու իմ խօսքս անոնց վրայ
կը կաթէր ։
23 Անձրևի սպասելու պէս՝ ինծի կը
սպասէին , ու յ ետքի անձրևին փա-
փաքելու պէս՝ բերաննին կը բանա-
յին ։
24 Թէ որ անոնց վրայ խնդայի , չէին
հաւատար , ու երեսիս լոյսը չէին
կրնար արհամարհել ։
25 Անոնց ճամբաները ընտրելով՝ իշ-
խան կը նստէի , և իբր զօրքին մէջը
եղող թագաւորի մը պէս՝ ու սգա-
ւորներուն մխիթարիչի մը պէս կը
բնակէի ։

ԳԼ . Լ

1 Յոբ կը գանգատի թէ իր առջի պատիւը յետին աստիճանի անարգութեան փոխուեր է ։ 15 ու իր յաջողութիւնը՝ թշուառութեան ։

1 Բայց հիմա տարիքով ինծմէ պըզ-
տիկ եղողները զիս ծաղր կ'ընեն ,
որոնց հայրերը՝ հօտերուս շուներուն
հետ դնելու չէի հաճեր .
2 Նաև անոնց ձեռքերուն ոյժը
ինծի ի՞նչ օգուտ ունէր . անոնց
առուգութիւնը կորսուած էր ։
3 Զրկաւորութենէ ու անօթութե-
նէ նիհարցեր էին , ու անապատը՝
մթին՝ աւերակ ու վայրի տեղերը կը
փախչէին ։
4 Իրենց կերակուրին համար՝ մա-
ցառներուն քովի *մոլոշները կը
քաղէին , ու գիհլի արմատ կը ժող-
վէին ։
5 Մարդոց մէջէն կը վռնտուէին .
ու անոնց ետևէն՝ գողի ետևէ պո-
ռալու պէս կը պոռային ։
6 Սոսկալի ձորերու մէջ կը բնա-
կէին . հողի ու ապառաժներու
ծակտիքներուն մէջը ։
7 Մացառներուն մէջը կը կանչըռը-
տէին . եղինճներուն տակը կը ժող-
վուէին ։
8 Յիմար ու աննշան մարդոց զա-
ւակներ ըլլալով , երկրէն կը վռըն-
տուէին ։
9 ա Ու հիմա ես անոնց խաղը՝ նաև
անոնց առակը եղեր եմ ։
10 Ինծմէ զարշելով կը հեռանան
ինծմէ , ու բ երեսէս թուքը չեն
խնայեր ։
11 Ինչու որ սանձը թուլցընելով՝
զիս նեղեցին , ու իմ առջևս երա-
սանակը թող տուին ։

Ն. Ք. ԴՔ. ԻՐՐ 1520

ճ Ծն. ԽԹ. 24 ։

յ Զաք. Ժ. 1 ։

* Կամ՝ փըր-փըրեճները

ա ԳԼ. ԺԷ. 6 ։ Սաղ. ԼԵ. 15 ։ ԿԹ. 12 ։ Ողբ. Գ. 14 ։ 63 ։

բ Թուէ. ԺԲ. 14 ։ Բ Օր. ԻԵ. 9 ։ Եսա. Ծ. 6 ։ Մատթ. ԻԶ. 67 ։ ԻԷ. 30 ։

Ն. Ք. գ.Ք. իբր 1520

12 Աջ կողմէս լակոտներ կ'ելլեն . անոնք ոտքերս կը հրեն , ու գ ինծի դէմ իրենց կորստեան ճամբաները կը պատրաստեն :
13 Անոնք շաւիղներս կ'աւրեն , վիշտերս կ'աւելցընեն . *ու անոնց դէմ ինծի օգնութիւն ընող մը չըկայ" :
14 Լայն խրամատէ մը ջուրի պէս կը յարձակին . աւերակներուն տակէն վրաս կը դիմեն :
15 Արհաւիրքները իմ վրաս դարձան , ու հովի պէս իմ պատիւս կը հալածեն . ու ազատութիւնս ամպի պէս անցաւ :
16 դ Եւ հիմա հոգիս իմ ներսի դիս կը հալի . տրտմութեան օրերը զիս պաշարեցին :
17 Իմ ցաւս գիշերանց ոսկորներս ծակեց . ու ջիղերս հանգստութիւն չունեցան :
18 Իր մեծ զօրութեամբը իմ հանդերձս փոխեց , ու իմ պատմուճանիս օձիքին պէս պատեց զիս :
19 Զիս ցեխին մէջը նետեց . ու ես հողի ու մոխիրի նմանեցայ :
20 Ես քեզի կ'աղաղակեմ , ու ինծի պատասխան չես տար . կը կայնիմ , ու դուն ինծի ուշադրութիւն †չես ըներ" :
21 Դուն ինծի անգութ ‡եղար ձեռքիդ զօրութեամբը թշնամիի պէս կը վարուիս ինծի հետ :
22 Զիս վերցընելով՝ հովին վրայ կը հեծցընես , ու զիս բոլորովին կը հալեցընես :
23 Ստոյգ գիտեմ որ զիս մահուան պիտի տանիս , ու ե ամէն ապրողներուն համար սահմանուած տունը :
24 ‖Արդարեւ աղաչանքը ոչինչ չ'օգտէ , երբոր Անիկայ ձեռքը երկընցընէ , ոչ ալ անոնց աղաղակը՝ երբոր Անիկայ կորսընցընէ" :
25 զ Դժբաղդութեան մէջ եղողին համար չէ՞ի լար . աղքատին համար հոգիս չէ՞ր նեղանար :
26 է Բայց երբոր ես բարիք կը յուսայի , չարիքը հասաւ . ու երբոր լոյսին կը սպասէի , խաւարը եկաւ :
27 Փորոտիքս եռաց ու չհանդարտեցաւ . թշուառութեանս օրերը ինծի հասան :
28 ը Սեւցած պտըտեցայ , բայց ոչ արեւէն . ելայ ու ժողովքին մէջը աղաղակեցի :
29 թ Ճագարներուն եղբայր՝ ու ջայլամներուն ընկեր եղայ :
30 ժ Մորթս վրաս սեւցաւ . ու ի ոսկորներս տաքութենէն այրեցան :
31 Վասն որոյ իմ քնարս սուգի փոխուեցաւ , ու իմ սրինգս՝ լալկաններու ձայնի :

գ Գլ. ժթ. 12 :
* Կամ՝ առանց մէկու մը անոնց օգնելուն :
դ Սաղ. իբ. 4 :
† Կամ՝ կ'ըննե՞ս :
‡ Եբր. փոխուեցար .
ե Եբր. թ. 27 :
‖ Կամ՝ Բայց Անիկայ մինչեւ գերեզմանը ձեռք պիտի չերկընցընէ, թէ որ կորստեան ատենը անոնք աղաչեն :
զ Սաղ. լե. 13, 14 : Հռոմ. ժբ. 15 :
է Երեմ. ը. 15 :
ը Սաղ. լը. 6 : խբ. 9 : խգ. 2 :
թ Սաղ. ճբ. 6 : Միք. ա. 8 :
ժ Սաղ. ճժթ. 83 : Ողբ. դ. 8 : ե. 10 :
ի Սաղ. ճբ. 3 :

## ԳԼ. ԼԱ

1—40 Յոբ հանդիսաւոր կերպով կը հաստատէ իր անարատ վարմունքը մէկ քանի պարտաւորութիւններու մէջ :

1 ա Աչքերուս հետ ուխտ ըրի . ուրեմն ի՞նչպէս կոյսի վրայ մըտածեմ :
2 Քանզի վերէն՝ բ Աստուծմէ ի՞նչ բաժին կ'ըլլայ ինծի , ու բարձր տեղուանքէն՝ Ամենակարողէն ի՞նչ ժառանգութիւն :
3 Կորուստը ամբարշտին համար սահմանուած չէ՞ , ու սոսկալի պատիժը անօրէնութիւն գործողներուն համար :
4 գ Միթէ Անիկայ իմ ճամբաներս չը՞տեսներ , ու ամէն քայլերս չը՞համրեր :
5 Թէ որ ստութեան մէջ քալեցի , կամ իմ ոտքս նենգութեան արտորաց ,
6 Թող կշռէ զիս արդարութեան կշիռքով , ու Աստուած իմ անմեղութիւնս գիտնայ :
7 Թէ որ ոտքս ճամբայէն խոտորեցաւ , ու դ սիրտս աչքերուս ետեւէն գնաց , ու ձեռքերուս արատ մը փակաւ ,
8 ե Թող ես սերմանեմ , եւ ուրիշը ուտէ . ու բուսցուցածս արմատէն փրցուի :
9 Թէ որ սիրտս կնկան մը ետեւէ մոլորեցաւ , կամ թէ դրացիիս դուռը դարանամուտ եղայ ,
10 Իմ կինս զ ուրիշի մը համար աղօրիքի քար դարձընէ , եւ ուրիշները անոր վրայ ծռին :
11 Ինչու որ աս պղծագործութիւն է , ու է դատաւորներէն պատժուելու անօրէնութիւն .
12 Որովհետեւ մինչեւ ան կորսընցընելը լափող կրակ մըն է , ու բոլոր արդիւնքս արմատէն կը խլէ :
13 Թէ որ ծառայիս կամ աղախինիս իրաւունք ընել չուզեցի , երբոր ինծի հետ վէճ ունեցան .
14 Ես ի՞նչ պիտի ընեմ , երբոր ը Աստուած ելլէ . ու երբոր քննէ , ի՞նչ պատասխան պիտի տամ անոր :
15 թ Չէ՞ որ զիս որովայնի մէջ ստեղծողը զանոնք ալ ստեղծեց . ու մեզ մէկն ալ արգանդին մէջ ձեւակերպողը մէկ չէ՞ :
16 Թէ որ աղքատին ցանկացածը չտուի , ու որբեւարիին աչքերը մարեցուցի .
17 Թէ որ պատառս մինակ կերայ , ու անկէ որբն ալ չկերաւ .
18 ( Ինչու որ երիտասարդութենէս 'ի վեր՝ հօր պէս մեծցուցի §զանիկայ , ու մօրս արգանդէն *անոր խնամք տարի : )

Ն. Ք. գ.Ք. իբր 1520

ա Մատ. ե. 28 :
բ Գլ. ի. 29 : իէ. 13 :
գ Բ Մն. ժզ. 9 : Գլ. լդ. 21 : Առակ. ե. 21 : ժե. 3 : Երեմ. լբ. 19 :
դ Տես Թուոց ժե. 39 : Ժող. ժա. 9 : Եզեկ. զ. 9 : Մատ. ե. 29 :
ե Ղեւ. իզ. 16 : բ Օր. իը. 30, 38, ...
զ Բ Թագ. ժբ. 11 : Երեմ. ը. 10 :
է Ծն. լը. 24 : Ղեւ. ի. 10 : բ Օր. իբ. 22 : Տես համր 28 :
ը Սաղ. խդ. 21 :
թ Գլ. լգ. 19 : Առակ. ժդ. 31 : իբ. 2 : Մաղ. բ. 10 :
§ Եբր. որբը :
* Եբր. որբեւարիին

Ն․ Ք․ ԶՓ․ ԻԲՐ 1520

19 Թէ որ հանդերձ չունեցող մը
կորսուելու վրայ , կամ ծածկոց
չունեցող չքաւոր մը տեսայ ,

ծ Տես Բ Օր․ ԻԴ․ 13 ։

20 Ու թէ որ անոր երիկամունքը
ծչօրհնեցին զիս , ու իմ ոչխարնե-
րուս բուրդէն չտաքցաւ ․

ե Գլ․ ԻԲ․ 9 ։

21 Թէ որ ձեռքս եորբին դէմ վեր-
ցուցի , երբոր տեսայ որ դրանը
մէջ ինծի օգնականներ կան ,

22 Թող իմ թեւս ուսէն իյնայ , ու
բազուկս արմունկէն կոտրուի ։

Հ Ես․ ԺԳ․ 6 ։ Յովէլ․ Ա․ 15 ։ * Եբր․ կո-րուստէն

23 Ինչու որ հԱստուծոյ *դատաս-
տանէն կը վախնայի , ու անոր մե-
ծափառութեանը առջեւը չէի կըր-
նար կենալ ։

Ի Մար․ Ժ․ 24 ։ Ա Տիմ․ Զ․ 17 ։

24 Իթէ որ յոյսս ոսկիի վրայ դնե-
լով , զուտ ոսկիին ըսի թէ՝ Իմ
վստահութիւնս դուն ես ․

Ժ Սաղ․ ԿԲ․ 10 ։ Առակ․ ԺԱ․ 28 ։

25 Ժթէ որ ստացուածքս շատ ըլլա-
լէն՝ ու ձեռքս շատ գտնելէն ուրա-
խացայ ․

Լ Բ Օր․ Դ․ 19 ։ ԺԱ․ 16 ։ ԺԷ․ 3 ։ Եզեկ․ Ը․ 16 ։

26 Լթէ որ արեւին նայեցայ՝ անոր
խիստ փայլուն եղած ատենը , կամ
պայծառութեամբ քալող լուսի-
նին ,

27 Ու սիրտս գաղտնի խաբուելով՝
բերանս ձեռքս պագաւ ,

Հ Հմր 11 ։

28 ( Որ աս ալ Հդատուելու անօրէ-
նութիւն մըն է ․ որովհետեւ վերը
բնակող Աստուածը ուրացած կ'ըլ-
լայի ․ )

Յ Առակ․ ԺԷ․ 5 ։

29 Յթէ որ զիս ատողին թշուառու-
թեանը վրայ ուրախացայ , կամ ա-
նոր փորձանքի հանդիպելուն հա-
մար խնդացի ․

Ն Մատ․ Ե․ 44 ։ Հռով․ ԺԲ․ 14 ։ † Եբր․ Քը-մացս

30 ( Ն†Լեզուիս ալ մեղք գործելու
թող չտուի , անէծքով անոր մեռ-
նիլը ուզելով ․ )

31 Թէ որ վրանիս մարդիկները չը-
սին ․ ‡Ե՞րբ անոր միսէն չէինք
կշտանար ․

‡ Եբր․ Երա-նի թէ

Շ Ծն․ ԺԹ․ 2․ 3 ։ Դատ․ ԺԹ․ 20․ 21 ։ Հռով․ ԺԲ․ 13 ։ Եբր․ ԺԳ․ 2 ։ Ա Պետ․ Դ․ 9 ։

32 ( Շհիւրը երբեք դիշերը դուրսը
չէր մնար ․ ճանապարհորդին դուռս
կը բանայի ․ )

Ո Ծն․ Գ․ 8․ 12 ։ Առակ․ ԻԸ․ 13 ։ Ովս․ Զ․ 7 ։ ‖ Կամ՝ մար-դու

33 Թէ որ յանցանքներս Ո‖Ադամին
պէս ծածկեցի , ու անօրէնութիւնս
ծոցիս մէջ պահեցի ,

Չ Ել․ ԻԳ․ 2 ։

34 Շատ Չբազմութենէ վախնալով ,
ու ազգերուն անարգութիւնը զիս
վախցընելով , ալ չխօսիմ ու դռնէն
չելլեմ ։

Պ Գլ․ ԼԳ․ 6 ։ Ջ Գլ․ ԺԴ․ 22 ։

35 ՊԵրանի թէ ինծի ականջ դնող
մը ըլլար , ( ահա աս է իմ փա-
փաքս՝ Ջոր Ամենակարողը ինծի
պատասխան տայ ․ ) ու իմ դատա-
խազս գրուածք մը գրեր ․

36 Անշուշտ զանիկայ իմ ուսիս վրայ
պիտի կրէի , ու պսակի պէս ինծի
պիտի կապէի ․

37 Քայլերուս համրանքը անոր պի-
տի զրուցէի ․ իշխանի պէս պիտի
մօտենայի անոր ։

38 Թէ որ իմ երկիրս ինծի դէմ կը
բողոքէ , ու անոր ակօսները կու
լան ,

Ռ Յակ․ Ե․ 4 ։ Ս Գ Թագ․ ԻԱ․ 19 ։

39 Թէ որ Ռանոր արդիւնքը առանց
ստակի կերայ , կամ Սանոր տէրե-
րուն հոգին հանեցի ,

Վ Ծն․ Գ․ 18 ։

40 Ցորենին տեղը Վփուշ ու գարիին
տեղը որոմ բուսցընէ ։
Յոբին խօսքերը լմնցաւ ։

ԳԼ․ ԼԲ

1 Եղիուս՝ Յոբին ու անոր իրեք բարեկամնե-
րուն կը բարկանայ ։ 6 Իր երիտասարդական
համարձակութիւնը կ'արդարացընէ , ըսելով
թէ՝ իմաստութիւնը տարիքին չնայիր ․ 11 ու
զանոնք կը յանդիմանէ՝ որ չկրցան Յոբը հա-
մոզել ։ 16 Եղիուսին փափաքը՝ խօսելու հա-
մար ։

Տ Գլ․ ԼԳ․ 9 ։

1 Ան ատենը աս իրեք մարդիկը Յո-
բին պատասխան տալէն դադա-
րեցան ․ ինչու որ անիկայ Տիր աչ-
քերուն առջեւը արդար կ'երեւնար ։

§ Եբր․ Ռա-մի
Ր Ծն․ ԻԲ․ 21 ։

2 Եւ §Արամի ազգատոհմէն ՐԲու-
զացի Բարաքիելին որդւոյն Եղիու-
սին բարկութիւնը բորբոքեցաւ ․
անոր բարկութիւնը Յոբին դէմ
բորբոքեցաւ , ինչու որ Աստուծմէ
աւելի ինքզինքը կ'արդարացընէր ։
3 Նաեւ իր բարկութիւնը բորբոքեցաւ
անոր իրեք բարեկամներուն դէմ ․
որովհետեւ պատասխան չգտան , ու
դարձեալ Յոբը յանցաւոր հանեցին ։
4 Ու Եղիուս Յոբին խօսքերուն լմըն-
նալուն սպասեր էր ․ որովհետեւ ա-
5 նոնք իրմէ ծեր էին ։ Բայց երբոր
Եղիուս տեսաւ , որ ան իրեք մար-
դոց բերանը ալ պատասխան չմը-
նաց , իր բարկութիւնը բորբոքե-
6 ցաւ ։ Ան ատենը Բուզացի Բա-
րաքիելին որդին Եղիուսը պատաս-
խան տալով՝ ըսաւ ․

Ց Գլ․ ԺԵ․ 10 ։

Ես տարիքով փոքր եմ , Ցու
դուք շատ ծեր էք ․ անոր համար
ետ կեցայ , ու գիտցածս ձեզի
յայտնելու վախցայ ․

⁑ Եբր․ Օրե-րը

7 Ըսի թէ ․ ⁑Երկար կեանքը՝ թող
խօսի , ու տարիներուն շատութիւ-
նը թող իմաստութիւնը գիտցը-
նէ ․

Ւ Գ Թագ․ Գ․ 12 ։ Դ․ 29 ։ Գլ․ ԼԵ․ 11 ։ ԼԸ․ 36 ։ Առակ․ Բ․ 6 ։ Ժող․ Բ․ 26 ։ Դան․ Ա․ 17 ։ Բ․ 21 ։ Մատ․ ԺԱ․ 25 ։ Յակ․ Ա․ 5 ։

8 Բայց մարդուն ներսի դին հոգի
կայ ․ ու ՒԱմենակարողին շունչը
անոնց հանճար կու տայ ։

Փ Ա Կոր․ Ա․ 26 ։

9 ՓԵրբեմն մեծերը իմաստուն չեն ,
ու ծերերը դատաստան չեն հաս-
կընար ։

10 Անոր համար ըսի ․ Ինծի՛ մտիկ
ըրէ , որ ես ալ իմ գիտցածս զը-
րուցեմ ։

11 Ահա ես ձեր խօսքերուն սպասե-
ցի , ձեր փաստերուն ականջ դրի ,
մինչեւ որ դուք խօսքերը քննեցիք ։

12 Ես ձեզի աղէկ ուշադրութիւն
ըրի , եւ ահա ձեզմէ մէկը չկայ , որ
Յոբը յանդիմանէ , ու անոր խօս-
քերուն պատասխան տայ ․

Ն. Ք. Գ. Ք. իրր 1520

ղԵրեմ. Թ. 23 : ա Կոր. ա. 29 :

13 ղԶըլլայ որ ըսէք թէ՝ իմաստութիւն գտանք. Աստուած է որ զանիկայ կը յաղթէ, և չէ թէ մարդ ։
14 Անիկայ իր խօսքերը ինծի դէմ չպատրաստեց. ես ալ ձեր խօսքերուն համեմատ՝ անոր պատասխան պիտի չտամ ։
15 Անոնք ապշեցան, ալ պատասխան չտուին. անոնց խօսքերը հատան.
16 Ու ես սպասեցի, մինչև որ ալ բան մը չըսին, հապա կեցան՝ ու ալ չկրկնեցին ։
17 Ես ալ իմ կարգիս պատասխան տամ. ես ալ իմ գիտցածս ցուցնեմ.
18 Ինչու որ խօսքերով լեցուն եմ. իմ ներսի դիս եղած հոգին զիս կը ստիպէ ։
19 Ահա որովայնս՝ չբացուած գինիի պէս է. նոր տիկերու պէս՝ պատռելու վրայ է ։
20 Զրուցեմ որ շունչ առնեմ, շրթունքներս բանամ, ու պատասխան տամ ։

եՂև. ԺԹ. 15 : բ Օր. ա. 17 : Ժղ. 19 : Առակ. իդ. 23 : Մատ. իբ. 16 :

21 Ա՛ղէ եմէկու մը աչառութիւն չընեմ, ու մարդու մը շողոքորթութիւն չընեմ.
22 Քանզի չեմ գիտեր շողոքորթութիւն ընելը. զիս Ստեղծողը շուտով զիս պիտի վերցընէր ։

ԳԼ. ԼԳ

1 Եղիուս հեզութեամբ իր անձը Աստուծոյ տեղը կը դնէ, Յոբին հետ վիճաբանելու համար. 8 զԱստուած կ՚արդարացընէ, ըսելով թէ՝ Անիկայ մեծ ըլլալով՝ իր գործքերը մարդուն իմացընելու պարտաւորութիւն չունի. 14 կը հաստատէ թէ Աստուած ապաշխարելու կը կանչէ մարդը՝ տեսիլքներով, 19 նեղութիւններով, 23 և իր պատգամաւորներովը ։ 31 Եղիուս կը յորդորէ Յոբը՝ որ ականջ դնէ ։

1 Բայց աղէ՛ ո՛վ Յոբ՝ իմ խօսքս մտիկ ըրէ, ու ամէն ըսածներուս ականջ դիր ։
2 Ահա հիմա բերանս կը բանամ, ու լեզուս քմացս հետ կը խօսի.
3 Խօսքերս սրտիս ուղղութեանը պէս պիտի ըլլան, ու շրթունքներս զուտ իմաստութիւն պիտի խօսին ։

ոԾն. բ. 7 :

4 ոԶիս Աստուծոյ Հոգին ստեղծեց, ու Ամենակարողին շունչը ինծի կեանք տուաւ ։
5 Թէ որ կրնաս՝ պատասխան տուր ինծի, պատրաստուելով՝ դիմացս կայնէ ։

բ Գլ. Թ. 34, 35 : Ժգ. 20, 21 : Լա. 35 :

6 բԱհա ես քու ըսածիդ համեմատ՝ Աստուծոյ համար եմ կաւէն. ես ալ հողէն ստեղծուեցայ ։

գ Գլ. Թ. 34 : Ժգ. 21 :
*Կամ՝ բեռս

7 գԱհա իմ երկիւղս քեզ պիտի չզարհուրեցընէ, ու իմ *ձեռքս քու վրադ պիտի չծանրանայ ։
8 Արդարև ականջիս ըսիր. ու խօսքերուդ ձայնը լսեցի, որ ըսէր.

տԳլ. Թ. 17 : Ժ. 7 : Ժա. 4 : Ժզ. 17 : Իգ. 10. 11 : Իէ. 5 : ԻԹ. 14 : Լա. 1 :
ւԳլ. Ժգ. 24 : Ժզ. 9 : ԺԹ. 11 :
ղԳլ. Ժգ. 27 : Ժդ. 16 : Լա. 4 :

9 տԵս մաքուր եմ ու առանց յանցանքի. ես անարատ եմ, ու իմ վրաս անօրէնութիւն չկայ.
10 Ահա Անիկայ վրաս պատճառներ կը գտնէ. ւզիս իրեն թշնամի կը սեպէ.
11 ղՈտքերս կոճղերու մէջ կը դնէ. իմ բոլոր շաւիղներս կը դիտէ ։
12 Ահա քեզի պատասխան կու տամ, որ աս բանիս մէջ իրաւունք չունիս. ինչու որ Աստուած՝ մարդէն մեծ է ։

ւԵս. Խե. 9 :

13 Անոր հետ ինչո՞ւ ւկը վիճիս. որովհետև անիկայ՝ բնաւ իր ըրածներուն համար պատասխան չտար ։

ըԳլ. Խ. 5 : Սաղ. Կբ. 11 :

14 ըՅիրաւի Աստուած մէկ անգամ կամ երկու անգամ կը խօսի, (Թէև մարդը ուշադրութիւն չըներ,)

րԹու. Ժբ. 6 : Գլ. Դ. 13 :

15 րԵրազի մէջ՝ գիշերուան տեսիլքի մէջ՝ երբոր խորունկ քուն մը կ՚իյնայ մարդոց վրայ, ու անոնք իրենց անկողիններուն մէջ կը քնանան ։

ժԳլ. Լզ. 10, 15 :

16 ժԱն ատենը մարդոց ականջները կը բանայ, ու անոնց խրատը կը կնքէ,
17 Որ մարդը՝ գէշ գործքէն դարձընէ, ու մարդէն հպարտութիւնը †արգիլէ ։

†Եբր. ծածկէ :

18 Անոր հոգին գերեզմանէն կը պահէ, ու կեանքը՝ որ սրով չմեռնի ։
19 Նաև մարդը իր անկողինին մէջ ցաւով կը պատժուի, և իր բոլոր ոսկորները սաստիկ ցաւով ։

իՍաղ. Ճէ. 18 :

20 Ան ատենը իանոր անձը հացէն կը զզուի, և անոր հոգին՝ փափաքելի կերակուրէն ։
21 Անոր մարմինը այնպէս կը հալի, որ ալ չերևնար. ու անոր չերևցած ոսկորները դուրս կ՚ելլեն ։
22 Անոր անձը գերեզմանին կը մօտենայ, ու անոր կեանքը՝ կորստեան ։
23 Եթէ անոր քովը թարգման պատգամաւոր մը ըլլայ, հազարէն մէկը, որ անոր ուղղութիւնը մարդուն իմացընէ,
24 Ան ատենը անոր ողորմելով պիտի ըսէ. Ազատէ՛ զանիկայ՝ որ գերեզմանը չիջնէ. ես քաւութիւն մը գտայ ։
25 Անոր մարմինը՝ տղու մարմինէն աւելի փափուկ պիտի ըլլայ, ու անիկայ իր մանկութեան օրերուն պիտի դառնայ.
26 Աստուծոյ պիտի աղաղակէ. ու Աստուած զանիկայ պիտի ընդունի. ու Անոր երեսը ուրախութեամբ պիտի տեսնէ. քանզի Անիկայ պիտի հատուցանէ մարդուն՝ անոր արդարութեանը համեմատ ։

Ն. Փ. ԳՔ. Էջ 1520

27 Անիկայ մարդոց վրայ կը նայի. ու եթէ մէկը ըսէ. Մեղք գործեցի, ու իրաւունքը աւրեցի, ու անիկայ ինծի օգտակար չեղաւ,
28 Ան տկէնը անոր հոգին կ'ազատէ որ գերեզմանը չիջնէ. ու անոր կեանքը լոյսը կը տեսնէ.
29 Ահա Աստուած աս ամէն բաները երկու երեք անգամ մարդուն կ'ընէ,
30 Որ անոր հոգին գերեզմանէն դարձրնէ, որ ապրողներուն լուսովը լուսաւորուի.
31 Լսէ՛ ով Յոբ՝ ինծի մտիկ ըրէ, լո՛ւռ կեցիր, որ ես խօսիմ.
32 Թէ որ ըսելիք ունիս՝ ինծի պատասխան տուր. դրուցէ, ինչու որ քեզ արդարացընելու կը փափաքիմ.
33 Եթէ ոչ՝ ինծի մտիկ ըրէ. լուռ կեցիր, որ ես քեզի իմաստութիւն սորվեցընեմ.

## ԳԼ. ԼԴ

1 Եղիուս կը յանդիմանէ Յոբը՝ քանզի Աստուծոյ վրայ անիրաւութիւն կը դնէր. 10 Կը հաստատէ թէ Աստուած Ամենակարողը չկրնար անիրաւ ըլլալ. 31 Մարդը պարտի խոնարհիլ Աստուծոյ առջին. 34 Եղիուս՝ Յոբը կը յանդիմանէ.

1 Ու տեղը Եղիուս իր խօսքը շարունակելով՝ ըսաւ.
2 Ո՛վ իմաստուններ՝ իմ խօսքերս մտիկ ըրէք, և դուք ով գիտուններ՝ ինծի ականջ դրէք.
3 Քանզի ականջը խօսքերը կ'որոշէ, ինչպէս որ քիմքը կերակուրին համը կ'առնէ.
4 Իրաւունքը մեզի ընտրենք. մէջերնիս գիտնանք, թէ որ բանը աղէկ է.
5 Որովհետև Յոբ ըսաւ. Ես արդար եմ, բայց Աստուած իմ իրաւունքս մէկդի ձգեց.
6 Միթէ իմ իրաւունքս պիտի ստե՞մ. իմ վէրքս մահաբեր է, թէև յանցանք չունիմ.
7 Յոբին պէս մարդ մը կա՞յ, որ հայհոյութիւնը ջուրի պէս կը խմէ.
8 Որ անօրէնութիւն գործողներուն հետ ընկերութեամբ կը պտըտի, ու ամբարիշտ մարդոց հետ կը քալէ.
9 Ինչու որ ըսաւ. Աստուծոյ հաճոյ ըլլալէն մարդուս օգուտ մը չկայ.
10 Ասոր համար ինծի մտիկ ըրէք՝ ով իմաստուններ, քաւ լիցի որ Աստուծոյ քովը չարութիւն, ու Ամենակարողին քովը անօրէնութիւն ըլլայ.
11 Որովհետև Անիկայ մարդուն ըրածին համեմատ կը հատուցանէ, ու ամէն մարդուն՝ իր ճամբուն համեմատ գտնել կու տայ.
12 Արդարև Աստուած անօրէնութիւն չըներ, ու Ամենակարողը դատաստան չծռեր.
13 Երկիրը ո՞վ յանձնեց անոր, ու բոլոր աշխարհքը ո՞վ կարգի դրաւ.
14 Թէ որ իր սիրտը անանկ ուզելու ըլլայ, ու իր հոգին ու շունչը իրեն կը ժողվէ.
15 Ան տենը ամէն մարմին մէկէն կը մեռնի. ու մարդը հող կը դառնայ.
16 Հիմա թէ որ ընտրողութիւն ունիս, ասիկայ մտիկ ըրէ. խօսքերուս ձայնին ականջ դիր.
17 Միթէ արդարութիւնը ատողը կրնա՞յ իշխել, կամ խիստ արդար եղողը յանցաւոր կրնա՞ս հանել,
18 Ան որ թագաւորին կ'ըսէ թէ, Եղեռնագործ ես, ու ազնուականներուն թէ՝ Չար մարդիկ էք.
19 Ան որ իշխաններուն աչառութիւն չըներ, ու հարուստը աղքատէն աւելի չխնամեր. որովհետև անոնք ամէնն ալ իր ձեռացը գործն են.
20 Մէկ վայրկեանի մէջ պիտի մեռնին. ու կէս գիշերուան ատենը ժողովուրդը խռովութեան մէջ իյնալով՝ պիտի անցնին. ու զօրեղները պիտի վերցուին՝ առանց մէկուն ձեռքը անոնց դպչելուն.
21 Ինչու որ Անոր աչքերը մարդուն ճամբաներուն վրայ են, ու անոր ամէն քայլերը կը տեսնէ.
22 Ոչ խաւար կայ, և ոչ մահուան շուք՝ որ անօրէնութիւն գործողները հոն պահուին.
23 Ինչու որ մարդուս վրայ երկար քննութիւն չըներ, երբոր անիկայ Աստուծոյ առջևը դատաստանի կ'երթայ.
24 Անիմանալի կերպով զօրաւորները կը կոտրէ, ու անոնց տեղը ուրիշները կը հաստատէ.
25 Քանզի անոնց գործքերը գիտէ, ու գանոնք գիշերով տակնուվայր կ'ընէ, ու կը խորտակուին.
26 Անոնց ամբարիշտ ըլլալուն համար՝ ամենուն առջևը զանոնք կը զարնէ.
27 Որովհետև անոր հետևելէն մէկդի քաշուեցան, ու անոր ճամբաները բնաւ չճանչցան.
28 Անանկ որ աղքատին աղաղակը անոր հասցուցին. ու անիկայ նեղեալներուն աղաղակը լսեց.
29 Թէ որ անիկայ հանգստութիւն տայ, ո՞վ կրնայ նեղութիւն տալ. ու թէ որ անիկայ երեսը պահէ, ո՞վ կրնայ զանիկայ տեսնել. ասանկ է՝ թէ ազգի մը և թէ մէկ մարդու մը.

Ն. Փ. ԳՔ. Էջ 1520
Ղ Բ Թագ. ԺԲ. 13: Առակ. ԻԸ. 13: Ղուկ. ԺԵ. 21: ա Յովհ. Ա. 9:
Է Հռովմ. Զ. 21:
Ծ Եսայ. ԼԸ. 17:
Կ Հմր. 28: Սաղ. ԾԶ. 13:
Հ Սաղ. ԼԴ. 11:
Ձ Գլ. Զ. 30: ԺԲ. 11:
Բ Գլ. ԼԴ. 9:
Գ Գլ. ԻԷ. 2:
Դ Գլ. Թ. 17:
Եբր. Նետս. Գլ. Զ. 4: ԺԶ. 13:
Ե Գլ. ԺԵ. 16:
Զ Գլ. Թ. 22, 23, 30: ԼԵ. 3: Մաղ. Գ. 14:
Է Ծն. ԺԸ. 25: Բ Օր. ԼԲ. 4: Բ Մն. ԺԹ. 7: Գլ. Ը. 3: ԼԶ. 23: Սաղ. ՂԲ. 15: Հռովմ. Թ. 14:
Ը Սաղ. ԿԲ. 12: Առակ. ԻԴ. 12: Երեմ. ԼԲ. 19: Եզեկ. ԼԴ. 20: Մատթ. ԺԶ. 27: Հռովմ. Բ. 6: Բ Կոր. Ե. 10: Ա Պետ. Ա. 17: Յայտն. ԻԲ. 12:
Թ Գլ. Ը. 3:
Եբր. անոր վրայ դնէ.
Ժ Սաղ. ՃԴ. 29:
Ի Ծն. Գ. 19: Ժող. ԺԲ. 7:
Լ Տես Ծն. ԺԸ. 25: Բ Թագ. ԻԳ. 3:
Կամ՝ Արդարը դատապարտողը
Խ Ել. ԻԲ. 28:
Կամ՝ Կրնա՞յ մէկը թագաւորին ըսել
Ծ Բ Օր. Ժ. 17: Բ Մն. ԺԹ. 7: Գործ. Ժ. 34: Հռովմ. Բ. 11: Գաղ. Բ. 6: Եփես. Զ. 9: Կող. Գ. 25: Ա Պետ. Ա. 17:
Կ Գլ. ԼԱ. 15:
Հ Ել. ԺԲ. 29, 30:
Ձ Բ Մն. ԺԶ. 9: Գլ. ԼԱ. 4: Սաղ. ԼԴ. 15: Առակ. Ե. 21: ԺԵ. 3: Երեմ. ԺԶ. 17: ԼԲ. 19:
Ղ Սաղ. ՃԼԹ. 12: Ամով. Թ. 2, 3: Եբր. Դ. 13:
Եբր. ալ դնէր.
Կամ՝ Անթիւ
Դան. Բ. 21:
Եբր. տեսնողներուն տեղը
Ա Թագ. ԺԵ. 11:
Սաղ. ԻԸ. 5: Եսայ. Ե. 12:
Գլ. ԼԵ. 9: Յակ. Ե. 4:
Ել. ԻԲ. 23:

Ն · Ք · ԶՔ ·
ԻՐ 1520

30 Որպէս զի կեղծաւոր մարդը չը-
թագաւորէ , ու "ժողովուրդին ո-
րոգայթ չըլլայ ։

" Տես Գ-
Թագ · ԺԲ ·
28 , 30 ։ Դ-
Թագ · ԻԱ ·
9 ։

31 Արդարեւ պէտք է Աստուծոյ ը-
սել . Ն Պատիժ կրեցի , ալ չարու-
թիւն չեմ ըներ .

Ն Դան · Թ ·
7-14 ։

32 Չտեսածս դուն ինծի սորվեցուր ,
եթէ ամբարշտութիւն գործեցի՝
ալ չեմ գործեր ։

33 Արդեօք *քու ուզածիդ պէս"
պիտի հատուցանէ՞ , որ հակառակ
կը կենաս . քանզի դուն ընտրելու
ես՝ ու չէ՛ թէ ես . ուրեմն ինչ որ
գիտես՝ խօսէ՛ ,

*ԵԲՐ · քու
քովէդ

34 Իմաստունները պիտի ըսեն ինծի
հետ . ( ու գիտուն մարդը մտիկ
պիտի ընէ ինծի . )

35 "Յոբ խելացութիւնով չզրու-
ցեց , ու անոր խօսքերը իմաստու-
թեամբ չեն ։

" Գլ · ԼԸ · 16 ։

36 Իմ փափաքս աս է , որ Յոբ մին-
չեւ վերջը փորձուի . ինչու որ ամ-
բարիշտ մարդոց † պէս պատաս-
խաններ տուաւ ։

† Կամ՝ կող-
մէն

37 Քանզի իր մեղքին վրայ ապըս-
տամբութիւն կ'աւելցընէ . մէջեր-
նիս ծափ կը զարնէ , ու Աստուծոյ
դէմ իր խօսքերը կը շատցընէ ։

## ԳԼ · ԼԵ

1 Եղիուս կը ցուցընէ թէ պէտք չէ որ մարդը Աստուծոյ հետ բաղդատուի . որովհետեւ մեր աղէկութիւնը ու գէշութիւնը չկրնար անոր հասնիլ ։ 9 Մարդիկ իրենց նեղութեանը մէջ շատ անգամ կ'աղաղակեն . բայց անոնց հեծութիւնները չլսուիր , քանզի առանց հաւատոյ է ։

1 Պատասխանեց Եղիուս իր խօսքերը շա-
րունակելով՝ ըսաւ .

2 Արդեօք իրաւունքո՞վ ըլլալ կը
կարծես ասիկայ , որ ըսիր թէ՝ Ես
Աստուծմէ աւելի արդար եմ ։

3 Քանզի "դուն ըսիր . Քեզի ի՞նչ
օգուտ կ'ըլլայ . մեղքես աւելի ի՞նչ
կը վաստըկիմ ։

" Գլ · ԻԱ ·
15 ։ ԼԴ · 9 ։

4 Ահա՛ ես քեզի պատասխան կու
տամ , նաեւ Բքեզի հետ՝ քու բարե-
կամներուդ ։

Բ Գլ · ԼԴ · 8 ։

5 ԳԵրկինքը նայէ ու տե՛ս . ամպե-
րը դիտէ՛ , որ անոնք քեզմէ աւելի
բարձր են ։

Գ Գլ · ԻԲ · 12 ։

6 Թէ որ դուն մեղք գործես , ԴԱ-
նոր դէմ ի՞նչ ըրած կ'ըլլաս , ու
երբոր քու անօրէնութիւններդ
շատնան , Անոր ի՞նչ կ'ընես ։

Դ Առակ · Ը ·
36 ։ Երեմ ·
Է · 19 ։

7 ԵԹէ որ արդար ես , Անոր ի՞նչ
կու տաս , կամ անիկայ քու ձեռ-
քէդ ի՞նչ կ'առնէ ։

Ե Գլ · ԻԲ · 2 ,
3 ։ Սաղ · ԺԶ ·
2 ։ Առակ ·
Թ · 12 ։ Հռ-
ոմ · ԺԱ ·
35 ։

8 Քու ամբարշտութիւնդ քեզի
պէս մարդուն՝ ու արդարութիւնդ
մարդու որդիին կը վնասէ ։

9 ԶԱնիրաւութիւններուն շատու-
թենէն կը բողոքեն . բռնաւորնե-
րուն բազուկին համար կ'աղաղա-
կեն ։

Զ Ել · Բ · 23 ։
Գլ · ԼԴ · 28 ։

10 Բայց մէկը չըսեր որ՝ Է Զիս ստեղ-
ծող Աստուածը ո՞ւր է , Ըան որ
գիշերուան մէջ երգեր կու տայ .

Է Ես · ԾԱ ·
13 ։
Ը Սաղ · ԽԲ ·
8 ։ Հէ · 6 ։
Գործ · ԺԶ ·
25 ։

11 Ան որ մեզ երկրի անասուններէն
աւելի Թ գիտուն , ու երկինքի թռչու-
նուններէն աւելի իմաստուն կ'ընէ ։

Թ Սաղ · ԼԲ ·
12 ։

12 ‡ Հոն չարերուն հպարտութեանը
համար Ժ կ'աղաղակեն , բայց Ա-
պատասխան չտար" ։

‡ Կամ՝ Հոն
կ'աղաղա-
կեն , բայց
Աստուած
պատասխան չտար՝
չարերուն
հպարտու-
թեանը հա-
մար ։
Ժ Առակ · Ա ·
28 ։

13 ԻԱրդարեւ Աստուած ունայնու-
թիւն մտիկ չըներ , ու Ամենակա-
րողը անոր չնայիր ։

Ի Գլ · ԻԷ · 9 ։
Առակ · ԺԵ ·
29 ։ Ես · Ա ·
15 ։ Երեմ ·
ԺԱ · 11 ։

14 ԼՈւ թէեւ կ'ըսես թէ , Զանիկայ
չես տեսներ . բայց դատաստան կայ
անոր առջեւը , ու Խ անոր յուսա ։

Լ Գլ · Թ · 11 ։
Խ Սաղ · ԼԷ ·
5 , 6 ։

15 Եւ հիմա Ծ իր բարկութեանը ը-
րածը բան մը չէ , ու անօրէնու-
թիւնը սաստիկ քննած չէ .

Ծ Սաղ · ՁԹ ·
32 ։

16 ԿՈւստի Յոբ իր բերանը զուր
տեղը բանալով , անգիտութեամբ
խօսքեր կը շատցընէ ։

Կ Գլ · ԼԴ · 35 ,
37 ։ ԼԸ · 2 ։

## ԳԼ · ԼԶ

1 Եղիուս կը ցուցընէ թէ՝ Աստուած արդար է իր ճամբաներուն մէջ , 16 և թէ Յոբին մեղքերը՝ Աստուծոյ օրհնութիւններուն արգելք կ'ըլլան ։ 24 Աստուծոյ գործքերը մեծարելի են ։

1 Ու Եղիուս շարունակելով՝ ըսաւ .

2 Քիչ մը համբերէ՛ ինծի , ու ես
քեզի յայտնեմ , որ Աստուծոյ հա-
մար ուրիշ խօսելիք ալ ունիմ ։

3 Գիտութիւնս հեռուէն պիտի
առնեմ , ու արդարութիւնը Ստեղ-
ծողիս ընծայեմ ։

4 Իրաւցընէ իմ խօսքերս սուտ
չեն . գիտութեամբ կատարեալ մէկ
մը քու քովդ է ։

5 Ահա՛ Աստուած հզօր է , բայց
մէկը չմերժեր , "անիկայ հզօր է իր
սրտին զօրութեամբը ։

" Գլ · Թ · 4 ։
ԺԲ · 13 , 16 ։
ԼԷ · 23 ։
Սաղ · ՂԹ ·
4 ։

6 Անիկայ ամբարիշտը չապրեցը-
ներ , ու նեղեալներուն իրաւունք
կ'ընէ .

7 ԲԱրդարներուն վրայէն աչքերը
չվերցըներ , ու զանոնք Գ թագաւոր-
ներուն հետ աթոռին վրայ կը դնէ .
զանոնք յաւիտեան կը նստեցընէ ,
ու կը բարձրանան ։

Բ Սաղ · ԼԳ ·
18 ։ ԼԴ · 15 ։
Գ Սաղ · ԾԺԳ ·
8 ։

8 Ու անոնք Դ թէ որ շղթաներով
կապուած՝ թշուառութեան կա-
պերուն մէջ բռնուին ,

Դ Սաղ · ՃԵ ·
10 ։

9 Ան անոնց կը յայտնէ ի-
րենց գործքերը , ու իրենց յան-
ցանքներուն շատնալը ։

10 Նաեւ Ե անոնց ականջը կը բանայ ,
որ խրատ ընդունին , և անոնց կը
պատուիրէ , որ անօրէնութենէ
դառնան ։

Ե Գլ · ԼԳ · 16 ,
23 ։

11 Թէ որ անոնք հնազանդելով՝ անոր
ծառայութիւն ընեն , Զօրերնին

Զ Գլ · ԻԱ · 13 ։
Ես · Ա · 19 ,
20 ։

բարութիւնով՝ ու տարիներնին ու-
րախութիւնով կ'անցընեն ։
12 Բայց թէ որ անոնք հնազանդու-
թիւն չընեն, սուրէ պիտի անցնին,
ու առանց գիտութեան պիտի
մեռնին ։
13 Եւ անոնք որ սրտով կեղծաւոր
են, իրենց վրայ բարկութիւն կը
դիզեն. երբոր զանոնք կապէ, անոր
չեն աղաղակեր ։
14 Անոնց անձը երիտասարդու-
թեան մէջ պիտի մեռնի, ու անոնց
կեանքը պիղծերուն մէջը պիտի կորս-
ուի ։
15 Աղքատը կ'ազատէ իր թշուա-
ռութեան ատենը. ու նեղութեան
մէջ անոր ականջը կը բանայ ։
16 Քեզ ալ նեղութենէ պիտի ա-
զատէր, ու անանկ ընդարձակու-
թեան բերէր, ուր որ նեղութիւն
չկայ. ու ծրու սեղանդ դրուածը
պարարտութեամբ լեցուն պիտի
ըլլար ։
17 Բայց թէ որ դուն չարին փաստը
*պաշտպանեցիր. անանկ փաստը
ու դատաստանը իրարու հետ կա-
պուած են ։
18 Որովհետեւ բարկութիւն կայ,
զգուշ որ հարուածով մը քեզ
վերցընէ. ան ատենը մեծ փրկան-
քը քեզ չկրնար ազատել ։
19 Միթէ անիկայ քու հարստու-
թիւնդ բանի տեղ կը դնէ՞. ոչ
ոսկին ու ոչ մեծ զանձերը բան մը
կը համրէ ։
20 Մի փափաքիր ան գիշերին՝ որուն
մէջ ժողովուրդները իրենց տեղէն
†աներեւոյթ կ'ըլլան" ։
21 Զգուշացիր ան անօրէնութեան
դառնալէն. ինչու որ դուն ասի-
կայ թշուառութենէն աւելի ընտ-
րեցիր ։
22 Ահա Աստուած իր զօրութիւնո-
վը ‡բարձրացեալ է". ո՞վ կրնայ
անոր պէս սորվեցընել ։
23 Անոր ճամբան ո՞վ որո-
շեց անոր. եւ ո՞վ բսաւ անոր թէ՝
Դուն անիրաւութիւն գործեցիր ։
24 Միտքդ պահէ որ մեծցընես ա-
նոր գործքերը՝ որն որ մարդիկները
կը տեսնեն ։
25 Ամէն մարդ կը տեսնէ զանոնք.
իւրաքանչիւր ոք հեռուէն կը դի-
տէ ։
26 Ահա Աստուած մեծ է, ու մենք
չենք գիտեր. եւ անոր տարինե-
րուն համրանքը անքննելի է ։
27 Ինչու որ ջուրերուն կաթիլները
կը քաշէ. անոնք իր գոլորշիէն
անձրեւ կը թափին,
28 Որն որ ամպերը վազցընելով՝
մարդոց վրայ առատօրէն կը կա-
թեցընեն ։
29 Բայց ընաւ մէկը ամպերուն տա-
րածուիլը՝ Անոր վրանին դղր-
դումը կրնա՞յ հասկընալ ։
30 Ահա անոր վրայ իր լոյսը կը
տարածէ, ու ծովուն խորութիւնը
կը ծածկէ ։
31 Ժողովուրդները ասս բաներով
§կը դատէ, առատօրէն կե-
րակուր կու տայ ։
32 Ափովը *կայծակը կը ծածկէ, ու
անոր հրաման կու տայ, թէ ուր
պիտի զարնէ ։
33 ††Անոր շառաչիւնը անոր համար
լուր կու տայ, խաշինքն ալ՝ ելլող
ամպին համար" ։

## ԳԼ. ԼԸ

1 Եղիուս իր խօսքը շարունակելով կը հաստատէ
թէ պէտք է Աստուծմէ վախնալ՝ անոր մեծ
գործքերուն համար, 15 եւ թէ անոր իմաս-
տութիւնը անքննելի է իր գործքերուն մէջ ։

1 Ասոր համար ալ սիրտս կը դողայ,
ու իր տեղէն կ'երերայ ։
2 Անոր ձայնին որոտումը՝ ու անոր
բերնէն ելած շառաչիւնը մտիկ ը-
րէք ։
3 Բոլոր երկնից տակը կը խրկէ զա-
նիկայ, ու անոր լոյսը՝ մինչեւ երկրին
ծայրերը ։
4 Անոր ետեւէն մէկ մեծ ձայն մը
կ'ելլէ, իր վեհափառութեան ձայ-
նովը կ'որոտայ, ու իր ձայնը լսուե-
լէն ետեւ չուշացըներ զանոնք ։
5 Աստուած իր ձայնովը սքանչելի
կերպով կ'որոտայ, անանկ մեծ
բաներ կ'ընէ՝ որ մենք չենք կրնար
հասկընալ ։
6 Ինչու որ անիկայ կ'ըսէ ձիւնին.
Երկրի վրայ եղիր, նաեւ սաստիկ
անձրեւին, ու իր զօրութեանը սաս-
տիկ անձրեւներուն ։
7 Անիկայ ամէն մարդուն ձեռքը
կը կնքէ, որ իր ստեղծած բոլոր
մարդիկները հասկընան ։
8 Գազանները որջերնին կը մտնեն,
ու այրերնուն մէջ կը բնակին ։
9 Հարաւէն փոթորիկ կու գայ, ու
հիւսիսէն ցուրտ ։
10 Աստուծոյ շունչէն սառնամա-
նիք կը տրուի, ու ջուրերուն լայ-
նութիւնը կը նեղնայ ։
11 Նաեւ պարզութիւնը մէգը կը
փարատէ. անոր լոյսը ամպը կը
ցրուէ ։
12 Անոր խորհրդովը տեղէ տեղ կը
փոխադրուին, որ աշխարհքին երե-
սը՝ երկրի վրայ անոր բոլոր հրա-
ման ըրածը կատարեն ։
13 Զանոնք կը բերէ՝ թէ խրատի
համար, թէ իր երկրին համար, եւ
թէ շնորհքի համար ։
14 Ո՛վ Յոբ՝ աս բանին մտիկ ըրէ.
կայնէ՝ ու Աստուծոյ սքանչելիք-
ներուն վրայով մտածէ ։

Ն. Ք. ԴՔ. 1520

Եկեղ. Բ. 5 ։
Գլ. ԺԶ. 32 ։ ԻԲ. 16 ։ Սաղ. ԾԶ. 23 ։
Սաղ. ԺԲ. 19 ։ ԼԱ. 8 ։ ՃԺԲ. 5 ։
Սաղ. ԻԴ. 5 ։
Սաղ. ԼԴ. 8 ։
* Եբր. կաշառքեցիր ։
Սաղ. ԽԹ. 7 ։
Առակ. ԺԱ. 4 ։
† Եբր. կը վերնան ։
Սաղ. ԿԴ. 18 ։
Տես Եբր. ԺԱ. 25 ։
‡ Կամ՝ կը բարձրացընէ ։
Ես. Խ. 13, 14 ։ Հռով. ԺԱ. 34 ։ Ա Կոր. Բ. 16 ։
Գլ. ԼԴ. 13 ։
Գլ. ԼԴ. 10 ։
Սաղ. ՂԲ. 5 ։ Յայտ. ԺԵ. 3 ։
Կամ՝ կ'երգեն ։
Ա Կոր. ԺԳ. 12 ։
Սաղ. Ղ. 2 ։ ՃԲ. 24, 27 ։ Եբրա. 12 ։
Սաղ. ՃԽԷ. 8 ։
Առակ. Գ. 20 ։

Ն. Ք. ԴՔ. 1520

Գլ. ԼԷ. 3 ։
Գլ. ԼԷ. 13 ։ ԼԸ. 23 ։
§ Կամ՝ կը խնամէ,
Սաղ. ՃԼԴ. 25 ։ Գործ. ԺԴ. 16 ։
* Եբր. լոյսը
Գ Թագ. ԺԸ. 41, 45 ։
†† Կամ՝ Անոր վրայով իր բարեկամը թող պատմէ ։ Անիրաւութեան դէմ բարկութեան ստացուածք կայ ։

Սաղ. ԻԹ. 3 ։ ԿԸ. 33 ։
Գլ. Ե. 9 ։ Թ. 10 ։ ԼԴ. 26 ։ Յայտ. ԺԵ. 3 ։
Սաղ. ՃԽԷ. 16, 17 ։
Սաղ. ՃԹ. 27 ։
Սաղ. ՃԴ. 22 ։
Գլ. ԼԸ. 29, 30 ։ Սաղ. ՃԽԷ. 17, 18 ։
Սաղ. ՃԽԸ. 8 ։
Եւ. Թ. 18, 23 ։ Ա Թագ. ԺԲ. 18, 19 ։ Եզր. Ժ. 9 ։ Գլ. ԼԴ. 31 ։
Գլ. ԼԸ. 26, 27 ։
Բ Թագ. ԻԱ. 10 ։ Գ Թագ. ԺԸ. 45 ։
Սաղ. ՃԺԱ. 2 ։

Ն. Ք. Գ. Ք. Իբր 1520

15 Գիտե՞ս թէ Աստուած ինչպէս կը կարգաւորէ զանոնք, և իր ամպէն լոյս կը փայլեցնէ ։

16 ւ Գիտե՞ս ամպերուն հաւասարակշռութիւնը, ու ի իմաստութեամբ կատարեալ եղողին սքանչելիքները ։

ւ Գւ. լզ. 29 ։ ի Գւ. լզ. 4 ։

17 Երկիրը հարաւային հովէն հանդարտացուցած ժամանակը, գիտե՞ս Թէ ինչու համար քու հանդերձներդ կը տաքնան ։

18 Անոր հետ միկտե՞ղ ծ տարածեցիր երկինքը, որ ամուր է՝ թափծու հայելիի պէս ։

ծ Ծն. ա. 6 ։ Ես. խդ. 24 ։

19 Սորվեցո՛ւր մեզի՝ թէ ի՞նչ պիտի ըսենք անոր. Ինչու որ մթութեան պատճառովը՝ չենք կրնար մեր խօսքը կարգաւորել ։

20 Թէ որ ես խօսելու ըլլամ, պիտի պատմուի՞ Անոր, եթէ մէկը զրուցէ, անշուշտ պիտի կլլուի ։

21 Ու հիմա ալ չեն կրնար նայիլ, երբոր երկինքը կը փայլատակէ, բայց հովը կ'անցնի, ու զանիկայ կը սրբէ ։

22 Ահա հիւսիսէն ոսկիի պէս լոյս կու գայ. Աստուծոյ քովը ահաւոր փառաւորութիւն կայ ։

23 Անիկայ Ամենակարող է, կ չենք կրնար հասկնալ զանիկայ. հ մեծ է զօրութեամբ՝ դատաստանով ու շատ արդարութեամբ, ու մէկուն *զրկանք չըներ" ։

կ ա Տիմ. զ. 16 ։ հ Գւ. լզ. 5 ։ * Կամ՝ պատասխան չտար ։

24 Անոր համար մարդիկ յ վախնալու են անկէ. ղ սրտով իմաստուններուն †բնաւ չնայիր" ։

յ Մատ. ժ. 28 ։ ղ Մատ. ժա. 25 ։ ա Կոր. ա. 26 ։ † Կամ՝ մէկը բնաւ չկրնար տեսնել զանիկայ ։

## ԳԼ. ԼԸ

1 Աստուած կը կանչէ Յոբը որ իր հարցմունքներուն պատասխան տայ ։ 4 Աստուած իր մեծամեծ գործքերը յիշելով կը յանդիմանէ Յոբին տգիտութիւնը, ու տկարամտութիւնը ։

1 Ան ատենը Եհովայ ա փոթորիկին մէջէն պատասխան տալով Յոբին՝ ըսաւ.

ա Ել. ժթ. 16, 18 ։ Գ Թագ. ժթ. 11 ։ Եզեկ. ա. 4 ։ Նաւ. ա. 3 ։

2 բ Ո՞վ է ատիկայ՝ որ գ անիմաստ խօսքերով խորհուրդը կը նսեմացնէ ։

բ Գւ. լդ. 35 ։ խբ. 3 ։ գ ա Տիմ. ա. 7 ։

3 դ Հիմա կտրիճի պէս մէջքդ պնդէ՛. քեզի հարցնեմ, և քու գիտցածդ ինծի իմացնես ։

դ Գւ. խ. 7 ։

4 ե Ո՞ւր էիր դուն՝ երբոր ես երկրին հիմերը կը դնէի. ըսէ՛ ինծի՝ թէ որ իմաստութեան տեղեկութիւն ունիս ։

ե Սաղ. ճդ. 5 ։ Առակ. ը. 29 ։ լ. 4 ։

5 Թէ որ գիտես՝ ըսէ՛. Ո՞վ դրաւ անոր չափերը, կամ թէ անոր վրայ լարը ո՞վ քաշեց ։

6 Անոր հիմերը ինչի՞ վրայ հաստատուած են, կամ թէ անոր անկիւնին քարը ո՞վ դրաւ,

7 Երբոր առաւօտեան աստղերը միկտեղ փառաբանութիւն կ'ընէին, ու երբոր զ Աստուծոյ բոլոր որդիները ցնծութեամբ կ'աղաղակէին ։

զ Գւ. ա. 6 ։

8 է Նաև ծովը որովայնէն ելած ժամանակը՝ ո՞վ գոցեց զանիկայ դռներով,

է Ծն. ա. 9 ։ Սաղ. լգ. 7 ։ ճդ. 9 ։ Առակ. ը. 29 ։ Երեմ. ե. 22 ։

9 Երբոր ամպը անոր հանդերձ դրի, ու մէգը խանձարուր.

10 Եւ ը անոր վրայ իմ հրամանս հաստատելով՝ անոր փականք ու դռներ դրի,

ը Գւ. իզ. 10 ։

11 Ու ըսի անոր. Մինչև հոս գաս՝ ու անդին չանցնիս, և քու ալիքներուդ հպարտութիւնը հոս թ դադարի ։

թ Սաղ. ձթ. 9 ։ ղգ. 4 ։

12 Կեանքիդ մէջը երբեք ժ առաւօտուն հրաման ըրի՞ր, արշալոյսին իր ծագելու տեղը ցուցուցի՞ր,

ժ Սաղ. հդ. 16 ։ ճխը. 5 ։

13 Որ երկրին ծայրերը բռնէ, ու ի չարագործները անկէ թօթվուին ։

ի Սաղ. ճդ. 35 ։

14 Երկիրը նոր ձև մը կ'առնէ, կնքուած կաւի պէս, և ամէն բան հանդերձով զարդարուածի պէս կ'երևնայ ։

15 Սակայն ամբարիշտներէն կ'արգիլուի իրենց լ լոյսը. ու խ բարձր բազուկը կը խորտակի ։

լ Գւ. ժը. 5 ։ խ Սաղ. ժ. 15 ։

16 ծ Ծովուն աղբիւրները մտե՞ր ես, ու անդունդին ծածուկ տեղուանքը պտըտե՞ր ես ։

ծ Սաղ. հէ. 19 ։

17 կ Մահուան դռները յայտնուեցա՞ն քեզի, ու մահուան շուքին դռները տեսա՞ր ։

կ Սաղ. թ. 13 ։

18 Երկրին լայնութեանը խելք հասա՞ւ. թէ որ ամէնը գիտես, զրուցէ ։

19 Լոյսին ‡բնակարանը ո՞ւր է, ու խաւարին տեղը ո՞ւր է,

‡ Եբր. բնակած ճամբան

20 Որ զանիկայ առնես իր սահմանը տանիս, ու անոր տանը ճամբաները իմանաս ։

21 Դուն ան ատենը ծնած ըլլալո՞ւդ համար, ու քու օրերուդ համրանքը շատ ըլլալո՞ւն համար գիտես ։

22 հ Ձիւնին շտեմարանները մտե՞ր ես, ու կարկուտին գանձերը տեսե՞ր ես,

հ Տես Սաղ. ճլե. 7 ։

23 ձ Որ ես կը պահեմ նեղութեան ժամանակին, ու կռիւի ու պատերազմի օրուան համար ։

ձ Ել. թ. 18 ։ Յես. ժ. 11 ։ Ես. լ. 30 ։ Եզեկ. ժգ. 11, 13 ։ Յայտ. ժզ. 21 ։

24 Ի՞նչ ճամբով լոյսը կը բաժնուի, և ի՞նչպէս արևելեան հովը երկրի վրայ կը տարածուի ։

25 ղ Հեղեղներուն համար անցք՝ ու որոտումներուն փայլակին համար ճամբայ ո՞վ բացաւ,

ղ Գւ. իը. 26 ։

26 Որ անձրև տայ ան երկրին վրայ՝ ուր որ մարդ չկայ, անապատին վրայ՝ ուր տեղ մէկը չբնակիր,

27 ճ Որ անապատները ու անշէն տեղերը կշտացնէ, ու կանանչ խոտին ընձիւղը բուսցնէ ։

ճ Սաղ. ճէ. 35 ։

28 մ Անձրևը հայր ունի՞. կամ թէ ցօղին կաթիլները ո՞վ ծնաւ ։

մ Երեմ. ժդ. 22 ։ Սաղ. ճխէ. 8 ։

Ն · Ք · ԴՓ · Իեր 1520

29 Սառը որո՞ւն արգանդէն կ՚ելլէ . ու երկնից սեղեամը ո՞վ ծնաւ ։

30 Ջուրերը քարի պէս կ՚ըլլան կը պահուին , ու անդունդին երեսը * կը սառի ։

31 Բազմաստեղին † կապերը կրնա՞ս կապել , կամ թէ Հայկին կապերը կրնա՞ս քակել ։

32 ‡ Մազարօթը ժամանակին կրնա՞ս հանել , ու Արջին և իր զաւակացը առաջնորդել ։

33 Երկինքին կանոնները գիտե՞ս . անոր իշխանութիւնը երկրի վրայ կրնա՞ս դնել ։

34 Ձայնդ ամպերուն կրնա՞ս վերցընել , որ ջուրերուն շատութիւնը քեզ ծածկէ ։

35 Կայծակները կրնա՞ս խրկել որ երթան , ու քեզի՝ Ահա պատրաստ ենք՝ ըսեն ։

36 Երիկամունքներուն մէջ ո՞վ իմաստութիւն դրաւ , կամ սրտին ո՞վ հանճար տուաւ ։

37 Ո՞վ կրնայ իմաստութիւնով ամպերը համրել , ու երկնից տիկերը ‖ տեղաւորել ,

38 Երբոր փոշին ձուլուելով զանգուած մը կ՚ըլլայ , ու հողին կոշտերը իրարու կը փակչին ։

39 Առիւծին համար որս կրնա՞ս որսալ , ու կորիւններուն ախորժակը կրնա՞ս կշտացընել ,

40 Երբոր անոնք իրենց այրերուն մէջ կը կծկտին , ու դարանի համար որջերնուն մէջ կը կենան ։

41 Ո՞վ կը պատրաստէ ագռաւին՝ իր որսը , երբոր անոր ձագերը Աստուծոյ կ՚աղաղակեն , և ուտելիք չունենալնուն համար կը թափառին ։

Ն · Սաղ · ճխէ · 16 ։
Ն Գլ · ԼԷ · 10 ։
* Եբր · կը բռնուի ։
Ն Գլ · Թ · 9 ։ Ամով · Ե · Տ ։
† Կամ փառաւորութիւնները
‡ Կամ Տասներկու կենդանակերպերը
Երեմ · ԼԱ · 35 ։
Ն Գլ · ԼԲ · Տ ։ Սաղ · ԾԱ · 6 ։ Ժող · Բ · 26 ։
‖ Կամ՝ թափել տալ ,
Սաղ · ՃԴ · 21 ։ ճխե · 15 ։
Սաղ · ճխէ · 9 ։ Մատ · Զ · 26 ։

## ԳԼ · ԼԹ

1 Այծեամներուն ու եղջերուներուն վրայով . 5 վայրենի իշուն , 9 միեղջերուին , 13 ջայլամին , 19 ձիուն , 26 բազէին , 27 ու արծիւին վրայով ։

1 Քարայծի այծեամներուն ծնանելու ժամանակը գիտե՞ս . եղնիկներուն ծնանիլը դիտեցի՞ր ։

2 Անոնց կատարելու ամիսները կրնա՞ս համրել , ու ծնանելու ժամանակնին գիտե՞ս ։

3 Անոնք ծռելով ձագերնին կը ծընանին , ու ցաւերնին կ՚անցընեն ։

4 Անոնց ձագերը կը զօրանան , դաշտի մէջ կը մեծնան . կ՚երթան , ու նորէն անոնց չեն դառնար ։

5 Ցիռը ո՞վ համարձակ թող տուաւ , ու վայրենի իշուն կապերը ո՞վ քակեց ,

6 Որուն՝ դաշտը տուի տունի համար ու անապատը՝ անոր բնակութեանը համար ։

7 Անիկայ քաղաքին աղաղակը ծաղր կ՚ընէ , ու բանեցընողին պոռալը չլսեր .

8 Անոր պտըտած լեռները իր արօտն է , ու ամէն տեսակ խոտերը կը փնտռէ ։

9 Միեղջերուն քեզի ծառայելու կը հաճի՞ , կամ քու մսուրիդ քովը գիշերը կը մնա՞յ ։

10 Արօր վարելու համար միեղջերուն կրնա՞ս չուանով կապել , կամ թէ քու ետեւէդ հովիտները կը տափանէ՞ ։

11 Անոր ոյժը շատ ըլլալուն համար՝ անոր կը վստահի՞ս , ու գործդ անոր կը յանձնե՞ս ։

12 Կը հաւատա՞ս անոր՝ թէ քու արմտիքդ պիտի բերէ , և քու կալդ ժողվէ ։

13 Ջայլամին թեւը ցնծութեամբ կը շարժի . արդեօք արագիլին թեւերուն ու փետուրներուն կը նմանի՞ ։

14 Անիկայ իր հաւկիթները գետինը կը ձգէ , ու զանոնք հողին վրայ կը տաքցընէ ,

15 Ու միտքը չգար որ ոտք մը զանոնք կը կոտրէ , կամ դաշտի գազանները ոտնակոխ կ՚ընեն ։

16 Անիկայ դաժանութ է իր ձագերուն՝ իրենը չեղածներու պէս . իր աշխատութիւնը պարապ ըլլալուն ‡ հոգ չըներ .

17 Ինչու որ Աստուած իմաստութենէն զուրկ ըրաւ զանիկայ , ու հանճարէն անոր բաժին չտուաւ ։

18 Անիկայ բարձր ելած ժամանակը՝ ձին ու անոր վրայ հեծնողը ծաղր կ՚ընէ ։

19 Ձիին դո՞ւն ոյժ տուիր . անոր պարանոցին †† բաշը դո՞ւն հագցուցիր ։

20 Զանիկայ մարախի պէս կրնա՞ս ցաթկեցընել . անոր վռնջելուն ‡‡ փառաւոր ձայնը ահաւոր է ։

21 Հովիտի մէջ գետինը կը փորէ , ու իր զօրութեամբը կը զուարճանայ . զինուորներուն դիմաւորելու կ՚ելլէ .

22 Երկիւղը ծաղր կ՚ընէ , բանէ մը չվախնար , ու սուրին երեսէն ետ չդառնար ։

23 ‖‖ Նետերը անոր վրայ կը սուլեն , նաև փայլուն նիզակը ու տեգարդը .

24 Կատաղութեամբ ու բարկութեամբ գետինը կը կլլէ , ու փողին ձայնը լսելով §§ չկրնար ինքզինքը զսպել ։

25 Քանի որ փողը կը հնչուի , աղէ՜ կ՚ըսէ . հեռուէն կ՚առնէ պատերազմին հոտը . զօրագլուխներուն որոտումը ու աղաղակը կը լսէ ։

26 Բազէն քու իմաստութիւնովդ

Սաղ · ԽԹ · 9 ։
Ե Գլ · ԽԴ · 5 ։ Երեմ · Բ · 24 ։ Ովս · Ը · 9 ։
Ն · Ք · ԴՓ · Իեր 1520
‡ Թուոց · ԻԳ · 22 ։ Բ Օր · ԼԳ · 17 ։
§ Եբր · Ակօսին մէջ
Ողբ · Դ · 3 ։
‡ Կամ՝ վախ չունի .
Ե Գլ · ԼԵ · 11 ։
†† Կամ՝ որոտումը
‡‡ Եբր · փառքը
Երեմ · Ը · 6 ։
‖‖ Եբր · Կապարճը ... կը սուլէ
§§ Կամ՝ չհաւատար ։

Ն. Ք. գՔ. իրր 1520

կը թռչի, ու թեւերը դէպ ՚ի հարաւ կը բանայ ։

27 Արծիւը քու հրամանովդ կը բարձրանայ, ու է բոյնը բարձրը կը հաստատէ ։

է Երեմ. խթ. 16։ Աբդ. 4։

28 Անիկայ ժայռի վրայ՝ ժայռի գագաթներու վրայ՝ ու ապառաժներու մէջ բնակելով կը կենայ ։

29 Կերակուրը անկէ կը փնտռէ. անոր աչքերը հեռուէն կը տեսնեն ։

30 Անոր ձագերն ալ արիւն կը ծծեն. և ըուր որ դիեր ըլլան, անիկայ հոն է ։

ը Մատ. իդ. 28 ։ Ղու. ժէ. 37 ։

ԳԼ. Խ

1 Յոբ Աստուծոյ առջեւ կը խոնարհի ։ 6 Աստուած զանիկայ կը հրաւիրէ՝ որ իր արդարութիւնը, կարողութիւնը և իմաստութիւնը խօսի ։ 15 Բեհեմովթին վրայով ։

1 Նու Աստուած Յոբին խօսելով ըսաւ.

2 Արդ՝ ա Ամենակարողին հետ վիճողը բան մը պիտի սորվեցնէ՞. Աստուծոյ հետ վիճաբանողը թող պատասխան տայ ։

ա Գլ. լդ. 13։

3 Ան ատենը Յոբ Տէրոջը պատասխան տալով՝ ըսաւ.

4 բ Ահա ես նուաստ եմ. քեզի ի՞նչ պատասխան տամ. գ ձեռքս բերնիս վրայ կը դնեմ ։

բ Եզր. թ. 6։ Գլ. խբ. 6 ։ Սաղ. ծա. 4 ։

գ Գլ. իթ. 9։ Սաղ. լթ. 9 ։

5 Մէկ անգամ խօսեցայ, ալ պատասխան պիտի չտամ. երկու անգամ ալ, բայց պիտի չյրկնեմ ։

6 դ Ան ժամանակը Աստուած՝ մրրիկէն Յոբին պատասխան տալով՝ ըսաւ.

դ Գլ. լը. 1 ։

7 ե Հիմա կտրիճի պէս մէջքդ պնդէ, զ Քեզի հարցնեմ, ու դուն ինծի իմացուր ։

ե Գլ. լը. 3 ։

զ Գլ. խբ. 4։

8 է Իմ դատաստանս պիտի խափանե՞ս. քեզ արդարացնելու համար զիս յանցաւո՞ր պիտի հանես ։

է Սաղ. ծա. 4 ։ Հռով. գ. 4 ։

9 Աստուծոյ պէս բազուկ ունի՞ս, և ը անոր ձայնովդ կրնա՞ս անոր պէս որոտալ ։

ը Գլ. լէ. 4 ։ Սաղ. իթ. 3, 4 ։

10 թ Հիմա փառաւորութիւնով ու մեծութիւնով զարդարուէ, և պատիւով ու փառքով հագուէ ։

թ Սաղ. ղգ. 1 ։ ճդ. 1 ։

11 Բարկութեանդ նեռանդը տարածէ, և ամէն հպարտին նայէ, ու զանիկայ խոնարհեցուր ։

12 Ամէն ժ հպարտին նայէ, ու զանիկայ նուաստէ, ու անօրէնները՝ իրենց տեղը կոխկռտէ ։

ժ Ես. բ. 12 ։ Դան. դ. 37 ։

13 Անոնց ամէնն ալ հողին մէջ աներեւոյթ ըրէ, երեսնին գաղտուկ տեղ պահէ ։

14 Ան ատենը ես ալ քեզի կը խոստովանիմ, որ աջ ձեռքդ քեզ կրնայ ազատել ։

15 Ահա ա Բեհեմովթը որ քեզի հետ ստեղծեցի, անիկայ արջառի պէս խոտ կ'ուտէ ։

ա Կամ՝ ձիաձետին, կամ՝ փիղը

Ն. Ք. գՔ. իրր 1520

16 Ահա հիմա անոր զօրութիւնը իր մէջքն է, և ոյժը փորին † մկաններուն մէջ ։

† Կամ՝ պորտին

17 Պոչը կ'երերցնէ եղեւնիի պէս. ազդրերուն ջիղերը հիւսուած են ։

18 "Անոր ոսկորները ‡ պղնձէ խողովակներ" են. անոր ոսկորները երկաթէ նիգերու պէս են ։

‡ Կամ՝ պղնձի ամուր կտորուանքներ

19 Աստուծոյ ճարտար գործը անիկայ է. զանիկայ ստեղծողը ‖ իր սուրը կրնայ անոր մօտեցնել" ։

‖ Կամ՝ անոր սուրը իրեն կու տայ ։

20 Արդարեւ անոր է պաշար կը բերեն լեռները, ուր որ դաշտի բոլոր գազանները կը խաղան ։

է Սաղ. ճդ. 14։

21 Անիկայ հովանաւոր ծառերուն տակը՝ եղէգներուն շուքին՝ ու ճահիճներուն մէջը կը պառկի ։

22 Հովանաւոր ծառերը իրենց շուքովը կը ծածկեն զանիկայ. հեղեղատներուն ուռիները անոր բոլորտիքն են ։

23 Թէ որ գետը առատանայ, անիկայ չվախնար. թէեւ Յորդանանը անոր բերանին վրայ դիմելու ըլլայ, հանդարտ կը կենայ ։

24 Միթէ անիկայ յայտնի ը կը բռնուի՞. § քիթովը որոգայթները կը ծակէ" ։

ը Գլ. խա. 1, 2 ։

§ Կամ՝ որոգայթի մէջ անոր քիթը ո՞վ կրնայ ծակել ։

ԳԼ. ԽԱ

1—34 Լեւիաթանին վրայ երեւցած Աստուծոյ մեծ զօրութիւնը ։

1 ա * Լեւիաթանը կարթով կրնա՞ս վերցնել, ու անոր լեզուէն լարով կրնա՞ս քաշել ։

ա Սաղ. ճդ. 26 ։ Ես. իէ. 1 ։

* Կամ՝ Կոկորդիլոսը

2 բ Անոր քիթին չուան անցընելով՝ ծնօտը կրնա՞ս փուշով ծակել ։

բ Տես Ես. լէ. 29 ։

3 Միթէ անիկայ քեզի շատ աղաչանքներ կ'ընէ՞, քեզի մեղմ խօսքեր կ'ըսէ՞ ։

4 Անիկայ քեզի հետ ուխտ կ'ընէ՞. զանիկայ մշտնջենաւոր ծառայի պէս կրնա՞ս առնել ։

5 Թռչունի հետ խաղալու պէս՝ անոր հետ կրնա՞ս խաղալ, կամ թէ քու աղախիններուդ համար զանիկայ կրնա՞ս կապել ։

6 Ընկերները անոր վրայ հացկերոյթ կրնա՞ն ընել. անիկայ վաճառականներուն մէջը կը բաժնուի՞ ։

7 Անոր մորթը սլաքներով՝ ու անոր գլուխը ձկնորսի տէգերով կրնա՞ս լեցնել ։

8 Ձեռքդ անոր վրայ դիր. պատերազմը յիշէ. ու նորէն պիտի չընես զանիկայ ։

9 Ահա անոր բռնողին յոյսը պարապ է. զանիկայ տեսնելով ալ՝ մարդ չի՞ զարհուրիր ։

10 Չկայ քաջասիրտ մէկը՝ որ զանիկայ արթնցընէ. հապա իմ առջիս ո՞վ կրնայ կայնիլ ։

11 գ Ո՞վ ինծի առաջուց տուաւ, որ

գ Հռով. ժա. 35 ։

Ն. Ք. ԳՌ. Իրր 1520

Դ Ել. ԺԹ. 5: Բ Օր. Ժ. 14: Սաղ. ԻԴ. 1: Ծ. 12: Ա Կոր. Ժ. 26:

ես անոր հատուցանեմ. Դ բոլոր երկինքին տակը եղածը իմս է:
12 Անոր անդամներուն ու զօրութեանը, նաև գեղեցիկ կարգաւորութեանը վրայով խօսելու պիտի չլռեմ:
13 Անոր հանդերձին երեսը ո՞վ կրնայ բանալ. անոր երկու կզակներուն մէջը ո՞վ կրնայ մտնել.
14 Անոր երեսին դռները ո՞վ կրնայ բանալ. ահը անոր ակռաներուն բոլորտիքն է:
15 Անոր ամուր վահանները իր հպարտութիւնն են. պինդ կնքուածի պէս գոց են.
16 Այնպէս քովէքով շարուած են, որ անոնց մէջը քամի չկրնար մտնել.
17 Իրարու կցուած են, մէկզմէկ կը բռնեն, ու բնաւ չեն զատուիր:
18 Անոր փռնգտալէն լոյս կը փայլի. ու աչքերը արշալոյսին արտևանունքներուն կը նմանին:
19 Անոր բերնէն վառած ջահեր կ'ելլեն, ու կրակի կայծեր կը ցայտեն:
20 Քիթին ծակերէն շոգի կ'ելլէ՝ եռացող սանի կամ կաթսայի պէս:
21 Անոր շունչէն կրակի կայծեր կը բորբոքին, ու բերնէն բոց կ'ելլէ:
22 Անոր պարանոցին վրայ ոյժ կը բնակի. ու երկիւղը անոր առջևէն կը խաղայ:
23 Անոր միսին ծալուածքները փակած են, անոր վրան հաստատուելով՝ չեն երերար:
24 Անոր սիրտը քարի պէս պինդ է, ու աղօրիքին վարի քարին պէս ամուր է:
25 Անոր ելած ժամանակը զօրաւորները կը վախնան, ու երկիւղէն կը շփոթին:
26 Անոր վրայ յարձակողին սուրը չդիմանար, ո՛չ ալ նիզակը՝ գեղարդը ու զրահը:
27 Երկաթը յարդի պէս է անոր առջևը, ու պղինձը փտած փայտի պէս:
28 Աղեղին նետը զանիկայ չփախցըներ. պարսաքարերը անոր դէմ մըղեղի կը դառնան:
29 Մահակները շիւղերու տեղ կը սեպէ. տէգին ճօճալը ծաղր կ'ընէ:
30 Անոր տակը սրածայր խեցիի կըտորուանք կան. ցեխին վրայ սուր բաներ կը տարածէ:
31 Անդունդը սանի մը պէս կ'եռացընէ, ու ծովը սպեղանիի կաթսային նման կ'ընէ:
32 Իր ետևէն ճամբան պսպղուն կ'երևցընէ. անդունդը ճերմկած մազերու կը նմանի:
33 Երկրի վրայ անոր նմանը չկայ, որ առանց անվախ ստեղծուած ըլլայ:
34 Ամէն բարձր բաներու վրայ կը նայի. բոլոր *հպարտութեան որդւոցը" թագաւորն է:

Ն. Ք. ԳՌ. Իրր 1520

*Կամ՝ վայրենի գազաններուն

## ԳԼ. ԽԲ

1 Յոբ Աստուծոյ կը հնազանդի: 7 Աստուած Յոբը կ'արդարացընէ, անոր բարեկամները կը խոնարհեցընէ, ու Յոբին աղօթքը կ'ընդունի: 10 Աստուած կը մեծցընէ ու կ'օրհնէ Յոբը: 16 Յոբին տարիքը ու մահը:

1 Ան ատենը Յոբ Տէրոջը պատասխան տալով՝ ըսաւ.
2 Գիտեմ որ ա ամէն բանի կարող ես. ու քու դիտաւորութիւնդ բնաւ չարգիլուիր:
3 Բ Ո՞վ է ասիկայ որ տգիտութեամբ խորհուրդը կը նսեմացընէ. յիրաւի կը զրուցէի, բայց չէի հասկընար. Գ † ինծի սքանչելի բաներ ըլլալով՝ չէի իմանար:
4 Կ'աղաչեմ մտիկ ըրէ՝ որ ես զըրուցեմ. Դ քեզի հարցընեմ, ու ինծի սորվեցուր:
5 Ես քու վրայովդ ականջի լրով լսեր էի, բայց հիմա աչքս կը տեսնէ քեզ:
6 Անոր համար Ե իմ անձս կ'արհամարհեմ, հողի ու մոխիրի վրայ կը զղջամ:
7 Արդ՝ Տէրը աս խօսքերը Յոբին զրուցելէն ետքը՝ Տէրը Եղիփազ Թեմանացիին ըսաւ. Քու վրադ՝ ու երկու ընկերներուդ վրայ իմ բարկութիւնս բորբոքեցաւ. ինչու որ ինծի համար՝ իմ Յոբ ծառայիս
8 պէս շիտակ չխօսեցաք: Ուստի հիմա ձեզի եօթը զուարակ ու եօթը խոյ առէք, ու Զ Յոբ ծառայիս երթալով՝ ձեզի համար ողջակէզ մատուցէք, և իմ Յոբ ծառաս Է ձեզի համար աղօթք ընէ, որ ես ալ անոր ‡ աղօթքը ընդունելով՝ ձեր անմտութեանը պէս չընեմ ձեզի. ինչու որ իմ առջևս իմ Յոբ ծառայիս պէս շիտակ չխօսեցաք:
9 Ան ատենը Եղիփազ Թեմանացին, ու Բաղդատ Սօքեցին, և Սոփար Նաամացին երթալով՝ Տէրոջը իրենց ըսածին պէս ըրին. և Տէրը Յոբին ‡ աղօթքը ընդունեց:
10 Ը Եւ Տէրը գերութենէ ազատեց Յոբը՝ իր բարեկամներուն համար աղօթք ըրած ատենը. նաև Տէրը Յոբին բոլոր ստացուածոցը Թ կրկ-
11 նապատիկը տուաւ: Ժ Եւ անոր եղբայրները՝ ու բոլոր քոյրերը՝ և զանիկայ առաջուց ճանչցողներուն բոլորն ալ անոր գալով՝ անոր տանը մէջ հաց կերան անոր հետ, ու անոր համար ցաւելով՝ Տէրոջը անոր խրկած բոլոր փորձանքին համար անոր մխիթարութիւն տուին. և ամէն մէկերնին մէյմէկ կտոր

ա Ծն. ԺԸ. 14: Մատ. ԺԹ. 26: Մար. Ժ. 27: ԺԴ. 36: Ղու. ԺԸ. 27:
Բ ԳԼ. ԼԸ. 2:
Գ Սաղ. Խ. 5: Ճլս. 1: ՃԼԹ. 6:
† ԵԲր. Ինծ.
Դ ԳԼ. ԼԸ. 3: Խ. 7:
Ե Եզր. Թ. 6: ԳԼ. Խ. 4:
Զ Թու. ԻԳ. 1:
Է Մատ. Ե. 24:
Ը Ծն. Ի. 17: Յակ. Ե. 15, 16: Ա Յով. Ե. 16:
‡ ԵԲր. Երեսր. ա. Թագ. Իե. 35: Մաղ. Ա. 8:
Ը Սաղ. ԺԴ. 7: Ծիզ. 1:
Թ Ես. Խ. 2:
Ժ Տես ԳԼ. ԺԹ. 13:

Ն. Ք. Ծ.
իբր 1520

ա Գւ. ը 7։ Յակ. ե. 11։
բ Տես գլ. ա. 3։
գ Գլ. ա. 2։
* Եբ՝ Տիւ ։
† Եբ՝ Եղջիւր ծարրոյ ։

ստակ՝ ու մէյմէկ ոսկի օղ տուին
12 անոր ։ Եւ Տէրը Յոբին վեր-
ջը առջինէն աւելի օրհնեց. անանկ
որ՝ տասնուչորս հազար ոչխար,
ու վեց հազար ուղտ, և հազար
զոյգ եզ, ու հազար մատակ էշ
13 ունեցաւ ։ Եւ անոր՝ եօթը տղայ
14 ու իրեք աղջիկ եղաւ ։ Ու մէկ
աղջկան անունը *Եմիմա՝ ու երկ-
րորդին անունը Կասիա՝ ու երրոր-
դին անունը †Կերէն Հապուք դրաւ ։
15 Եւ բոլոր երկրին վրայ Յոբին աղ-
ջիկներուն պէս գեղեցիկ կնիկներ
չէր գտնուեր. ու հայրերնին անոնց
ժառանգութիւն տուաւ իրենց եղ-
բայրներուն մէջը ։
16 Եւ ասկէ ետքը Յոբ հարիւր
քառասուն տարի ապրելով՝ տեսաւ
իր որդիները ու իր որդւոցը որդի-
17 ները՝ մինչև չորրորդ ազգը. Ու Յոբ
ծերացած ու օրերը լեցուած մե-
ռաւ ։

Ն. Ք. Ծ.
իբր 1520

դ Գւ. ե. 26։ Առակ. գ. 16։
ե Ծն. իե. 8։

---

# ԳԻՐՔ ՍԱՂՄՈՍԱՑ

## ՍԱՂՄՈՍ Ա

1 Բարեպաշտ մարդուն երջանկութիւնը ։ 4 ամբարշտին ապերջանկութիւնը ։

1 Երանելի է ան մարդը՝ որ ամբա-
րիշտներուն խորհուրդին մէջ
չքալեր, ու մեղաւորներուն ճամ-
բուն մէջ չկենար ու ծաղր ընող-
ներուն նստած տեղը չնստիր
2 Հապա անոր կամքը Տէրոջը օ-
րէնքին մէջն է ու ցորեկ ու գիշեր
անոր օրէնքին վրայ կը մտածէ ։
3 Եւ անիկայ ջուրի ճամբաները
տնկուած ծառի պէս պիտի ըլլայ,
որ իր ժամանակին իր պտուղը կու
տայ. ու անոր տերևը պիտի չթա-
փի, և ինչ բան որ ընէ՝ պիտի
յաջողի ։
4 Այսանկ չեն ամբարիշտները, հա-
պա մղեղի պէս՝ որ հովը կը ցրուէ ։
5 Ասոր համար ամբարիշտները դա-
տաստանին մէջ պիտի չկրնան կե-
նալ, ոչ ալ մեղաւորները արդա-
րոց ժողովքին մէջ ։
6 Վասն զի Տէրը կը ճանչնայ ար-
դարներուն ճամբան. բայց ամբա-
րիշտներուն ճամբան պիտի կոր-
սուի ։

ա Ղուկ. ի. 42։ Գործ. ա. 20։
բ Առակ. դ. 14, 15։
գ Սաղ. իզ. 4։ Երեմ. ժե. 17։
դ Սաղ. ճժթ. 35, 47, 92։
ե Յես. ա. 8։ Սաղ. ճժթ. 1, 97։
զ Երեմ. ժէ. 8։ Եզեկ. խէ. 12։
է Ծն. լթ. 3, 23։ Սաղ. ճիը. 2։ Ես. գ. 10։
ը Յոբ. իա. 18։ Սաղ. լե. 5։ Ես. ժէ. 13։ իթ. 5։ Ովս. ժգ. 3։
թ Սաղ. լէ. 18։ Նաւ. ա. 7։ Յովհ. ժ. 14։ բ Տիմ. բ. 19։

## ՍԱՂՄ. Բ

1 Քրիստոսի թագաւորութիւնը ։ 10 Թագաւորներուն յորդորանք մը որ անոր հնազանդին ։

1 Ինչու ազգերը խռովու-
թիւն կ՚ընեն, ու ժողովուրդնե-
րը պարապ բան կը մտածեն ։
2 Երկրի թագաւորները ինքզինք-
նին կը հաստատեն, ու իշխանները
մէկտեղ խորհուրդ կ՚ընեն Տէրոջը
դէմ, ու անոր Օծեալին դէմ,
3 Ըսելով. Կոտրենք անոնց կա-
պերը, ու մեզմէ ձգենք անոնց ‖լու-
ծը ։
4 Երկինքը բնակողը անոնց վրայ
պիտի ծիծաղի. Տէրը ծաղր պիտի
ընէ զանոնք ։
5 Ան ատենը իր բարկութիւնովը
պիտի խօսի անոնց, և իր սրտմտու-
թիւնովը պիտի խռովեցնէ զա-
նոնք ըսելով.
6 Ես օծեցի իմ թագաւորս իմ
սուրբ լեռանս՝ Սիոնին վրայ ։
7 Հրամանը պիտի պատմեմ. Տէրը
ինծի ըսաւ. Դուն իմ Որդիս ես.
ես այսօր քեզ ծնայ.
8 Խնդրէ ինծմէ, ու հեթանոսնե-
րը քեզի ժառանգութիւն պիտի
տամ ու երկրին ծայրերը քեզի
ստացուածք.
9 Զանոնք երկաթէ գաւազա-
նով պիտի §կոտրես բրուտի ա-
մանի պէս պիտի փշրես զանոնք ։
10 Ուստի հիմա ով թագաւորներ՝
միտքերնիդ առէք, երկրի դատա-
ւորներ՝ խրատուեցէք ։
11 Երկիւղով Տէրոջը ծառայե-
ցէք, ու դողալով *անկէ վախ-
ցէք" ։
12 Որդին համբուրեցէք որ չբարկա-
նայ, ու ճամբուն մէջ չկորսուիք,
երբոր անոր բարկութիւնը քիչ
մը բորբոքի ։ Երանի ան ամե-
նուն՝ որ անոր կը յուսան ։

ա Սաղ. խզ. 6։ Գործ. դ. 25, 26։
բ Սաղ. խե. 7։ Յովհ. ա. 41։
գ Երեմ. ե. 5։ Ղուկ. ժթ. 14։
‖ Եբր. Կապանքները ։

դ Սաղ. ժա. 4։
ե Սաղ. լէ. 13։ ծթ. 8։ Առակ. ա. 26։
զ Բ Թագ. ե. 7։
է Գործ. ժգ. 33։ Եբր. ա. 5։ ե. 5։
ը Սաղ. իբ. 27։ Հր. 8։ ծթ. 27։ Դան. է. 13, 14։ Տես Յով. ժէ. 4, 5։ ժթ. 15։
թ Սաղ. ծթ. 23։ Յայտ. բ. 27։ ժբ. 5։
§ Կամ՝ հովուես,
ժ Եբր. ժբ. 28։
ժա Փիլ. բ. 12։
* Կամ՝ ցնծացէք ։
ժբ Յայտ. զ. 16, 17։
ժգ Սաղ. լզ. 8։ ձդ. 12։ Առակ. ժզ. 20։ Ես. լ. 18։ Երեմ. ժէ. 7։ Հռով. թ. 33։ ժ. 11։ ա Պետ. բ. 6։

## ՍԱՂՄ. Գ

1—8 Աստուծոյ պաշտպանութեանը ապահովութիւնը ։

Սաղմոս Դաւթի, իր որդւոյն Ա-
բիսողոմին երեսէն փախած ժամա-
նակը ։

1 Ով Տէր՝ իմ թշնամիներս որ-
չափ շատցան. իմ վրաս ելլող-
ները շատուոր են ։
2 Շատերը իմ անձիս համար կ՚ը-

ա Բ Թագ. ժե. ժզ. ժէ. ժը։
բ Բ Թագ. ժե. 12։ ժզ. 15։

սէն թէ՝ գԱնոր փրկութիւն չկայ Աստուծմէն ։ (*Սէլա ։)
3 Բայց ով Տէր՝ դուն ես դիմ ապաւէնս, իմ փառքս, ու եիմ գլուխս բարձրացընողը ։
4 Իմ ձայնովս Տէրոջը կանչեցի, ու զիր սուրբ լեռնէն եինծի պատասխանեց ։ (Սէլա ։)
5 էԵս պառկեցայ ու քնացայ . արթնցայ, վասն զի Տէրը զիս պաշտպանեց ։
6 Բես պիտի չվախնամ բիւրաւոր ժողովուրդներէն՝ որոնք իմ չորս կողմս պատեցին ։
7 Ելի՛ր ով Տէր, զիս փրկէ՛ ով իմ Աստուածս, ժվասն զի դուն զարկիր իմ բոլոր թշնամիներուս ծնօտը . ամբարիշտներուն ակռաները փշրեցիր ։
8 եՓրկութիւնը Տէրոջն է . քու օրհնութիւնդ քու ժողովուրդիդ վրայ †է ։ (Սէլա ։)

## ՍԱՂՄ . Դ

1 Դաւիթ կ'աղաչէ որ Աստուած իրեն ականջ դնէ ։ 2 Իր թշնամիները կը յանդիմանէ, ու անոնց յորդորանքներ կ'ընէ ։ 6 Մարդուն երջանկութիւնը Աստուծոյ շնորհքովը կ'ըլլայ ։

—Գլխաւոր երգեցողին ; ‡Նկինօթի վրայ . Սաղմոս Դաւթի ։

1 Կանչելու ատենս ինծի պատասխան տուր՝ ով իմ արդարութեանս Աստուածը . նեղութեան մէջ զիս ընդարձակեցիր . ողորմէ՛ ինծի, ու լսէ՛ իմ աղօթքս ։
2 Մարդոց որդիներ՝ մինչեւ ե՞րբ իմ փառքս ամօթի պիտի դարձնէք, եւ ունայնութիւն պիտի սիրէք, ‖ստութիւն փնտռէք ։ (Սէլա ։)
3 Բայց գիտցէ՛ք որ ՖՏէրը իրեն նուիրուած մարդը ‖որոշեց . Տէրը պիտի լսէ իրեն կանչելու ատենս ։
4 գԴողացէ՛ք ու մեղք մի՛ գործէք . դխօսեցէք սրտերնուդ հետ անկողիններնուդ վրայ, ու լռեցէք ։ (Սէլա ։)
5 եԱրդարութեան զոհեր մատուցէք, ու զՏէրոջը յուսացէք ։
6 Շատերը կ'ըսեն թէ՝ Ո՞վ մեզի բարութիւն պիտի ցուցընէ . էով Տէր՝ քու երեսիդ լոյսը մեր վրայ ծագէ ։
7 ըԻմ սրտիս ուրախութիւն տուիր, անոնց ցորենին ու գինիին առատութեան ժամանակէն աւելի ։

8 ըԽաղաղութեամբ պիտի պառկիմ ու քնանամ . ժվասն զի դուն միայն ով Տէր՝ զիս ապահովութեամբ կը բնակեցընես ։

## ՍԱՂՄ . Ե

1 Դաւիթ աղօթք ընելով՝ իր ջերմեռանդութիւնը կը յայտնէ ։ 4 Աստուած չարերուն չհաճիր ։ 7 Դաւիթ իր հաւատքը յայտնելով՝ Աստուծոյ կ'աղօթէ որ իրեն առաջնորդէ . 10 իր թշնամիները կործանէ, 11 ու արդարը պահպանէ ։

Գլխաւոր երգեցողին, §Նհիլօթի վրայ . Սաղմոս Դաւթի ։

1 Ո՛վ Տէր՝ ականջ դիր իմ խօսքերուս . մի՛տքդ առ իմ աղաղակըս ։
2 —Իմ կանչելուս ձայնը մտիկ ըրէ՝ ով իմ Թագաւորս ու Աստուածս, վասն զի Բես քեզի կ'աղաչեմ ։
3 Ո՛վ Տէր՝ գառտուանց պիտի լսես իմ ձայնս . առտուանց *պատրաստ պիտի ըլլամ" քեզի, ու սպասեմ ։
4 Վասն զի դուն անօրէնութիւն ուզող Աստուած չես . չարը քու քովդ պիտի չբնակի ։
5 դՀպարտները քու աչքերուդ առջին պիտի չկենան . բոլոր անօրէնութիւն գործողները կ'ատես ։
6 եՍուտ խօսողները կը կորսնցընես . զՏէրը արիւնահեղ ու նենգաւոր մարդէն կը զզուի ։
7 Բայց ես քու ողորմութեանդ շատութիւնովը քու տունդ պիտի մտնեմ . քու վախովդ երկրպագութիւն պիտի ընեմ էքու սուրբ տաճարիդ մէջը ։
8 ըՈ՛վ Տէր՝ քու արդարութեամբդ ինծի առաջնորդ եղիր թշնամիներուս համար . Թքու ճամբադ շիտկէ իմ առջիս ։
9 Վասն զի անոնց բերնին մէջ ճշմարտութիւն չկայ . անոնց ներսիդին չարութիւն է . ժանոնց կոկորդը բաց գերեզման է . իիրենց լեզուովը նենգաւոր եղան ։
10 Ո՛վ Աստուած՝ յանցաւոր համարէ զանոնք . լիրենց խորհուրդներովը թող իյնան . անոնց մեծ ամբարշտութիւններուն համար հալածէ՛ զանոնք . վասն զի քեզի դէմ ապստամբեցան ։
11 Բայց ամէն քեզի յուսացողները խթող ուրախ ըլլան . յաւիտեան թող ցնծան, ինչու որ դուն զանոնք կը պաշտպանես . եւ քու անունդ սիրողները թող քեզմով զուարճանան ։
12 Վասն զի դուն ծպիտի օրհնես արդարը՝ ով Տէր . բարի կամեցողութիւնով անոր չորս կողմը պի-

գ բ Թագ. ժգ. 5. Սաղ. հա. 11.
* Այս բառին որոշեալ նշանակութիւնը թէեւ յայտնի չէ, սակայն Եբրայական բնագրին մէջ գտնուելուն՝ մենք ալ պահեցինք թարգմանութեանս մէջ ։ Կ'երեւի թէ երգեցողները անիկա կը գործածէին իրենց երգերուն մէջ կամ իրենց ձայնը փոխելու համար, եւ կամ բարձրացնելու համար ։
դ Ծն. ժե. 1. Սաղ. իը. 7. ճժթ. 114.
ե Սաղ. իէ. 6.
զ Սաղ. ը. 6. Խր. 3. դթ. 9.
է Սաղ. լդ. 4.
ը Ղև. իզ. 6. Սաղ. դ. 8. Առակ. դ. 24.
թ Սաղ. իէ. 3.
ժ Յոբ. ժվ. 10. իթ 17. Սաղ. ծը. 6. Ողբ. դ. 30.
ի Առակ. իա. 31. Ես. խգ. 11. Երեմ. դ. 23. Ովս. ժգ. 4. Յովն. բ. 9. Յայտ. է. 10. ժթ. 1.
†Կամ՝ ըլլայ.

ը Յոբ. ժա. 18. 19. Սաղ. դ. 5.
ժ Ղև. իե. 18. 19. իզ. 5. բ Օր. ժբ. 10.

§ Այսինքն հաստանական գործիօք փչելու նուագարաններուն անունն է ։
ա Սաղ. գ. 4.
բ Սաղ. կե. 2.
գ Սաղ. ը. 5. ծը. 13. ճլ. 6.
* Կամ՝ աղօթքս պիտի ներկայացնեմ
դ Ամբ. ա. 13.
ե Յայտ. իա. 8.
զ Սաղ. ծե. 23.
է գ Թագ. ը. 29. 30. 35. 38. Սաղ. լը. 2. ճլը. 7. ճլը 2.
ը Սաղ. իե. 5.
թ Սաղ. իե. 4. իէ 11.
ժ Ղու. ժա. 44. Հռով. գ. 13.
ի Սաղ. կբ. 4.
լ բ Թագ. ժե. 31. ժէ. 14. 23.
խ Եւ. կե. 13.
ծ Սաղ. ճժե. 13.

— Ամբ. դ. 19. ‡ Այսինքն հասանական գործիօք զարնելու նուագարաններուն անունն է ։ Ֆ բ Տիմ. բ. 19. բ Պետ. բ. 9. ‖ Կամ՝ երեւելի ըրաւ. գ Եփե. դ. 26. դ Սաղ. հէ. 6. բ Կոր. ժգ. 5. ե բ Օր. լգ. 19. Սաղ. ծ. 14. ծա. 19. Տես բ Թագ. ժե. 12. զ Սաղ. լէ. 3. կբ. 8. է Թու. զ. 26. Սաղ. ձ. 3, 7, 19. ճժթ. 135. ըԵբ. թ. 3.

տի պատես , որպէս թէ վահանով մը ։

## ՍԱՂՄ · Զ

1 Դաւիթին դանդատները իր հիւանդութեանը ատենը ։ 8 Անիկայ հաւատքով իր թշնամիներուն վրայ յաղթող ըլլալ կը յուսայ ։

Գլխաւոր երգեցողին , Նեղինօթի վըրայ , * Շէմինիթի վրայ ․ Սաղմոս Դաւթի ։

1 Ո՛վ ա Տէր՝ քու սրտմտութեամբդ
զիս մի՛ յանդիմաներ , և քու
բարկութեամբդ զիս մի՛ խրատեր ։
2 բ Ո՛վ Տէր՝ ողորմէ՛ ինծի՛ վասն զի
տկար եմ ես ․ գ զիս բժշկէ՛ ո՛վ Տէր ,
վասն զի ոսկորներս կը սարսափին ։
3 Իմ անձս ալ խիստ սարսափեցաւ ․ և դուն ո՛վ Տէր՝ դ մինչև
ե՞րբ ։
4 Դարձի՛ր ո՛վ Տէր՝ փրկէ՛ իմ
անձս ․ քու ողորմութեանդ համար
զիս ազատէ՛ ։
5 ե Վասն զի մահուան մէջ քեզ
յիշատակել չկայ ․ գերեզմանին
մէջ ո՞վ քեզի շնորհակալութիւն
պիտի ընէ ։
6 Հառաչանք ընելէն յոգնեցայ ․
ամէն գիշեր առատութեամբ կը
լուամ իմ անկողինս ․ արցունքներովս կը թրջեմ իմ մահիճս ։
7 զ Իմ աչքս մաշեցաւ տրտմութենէն ․ իմ ամէն թշնամիներուս համար հինցաւ ։
8 է Ինծմէ ետ կեցէք ամէնքդ ալ՝ որ
անօրէնութիւն կը գործէք ․ վասն
զի Տէրը իմ լալուս ձայնը ը լսեց ․
9 Տէրը իմ աղօթքս լսեց ․ Տէրը
իմ խնդրուածքս պիտի ընդունի ։
10 Թող ամչնան ու խիստ զարհուրին իմ ամէն թշնամիներս ․ ետ
դառնան , ու շուտով թող ամչնան ։

## ՍԱՂՄ · Է

1 Դաւիթ իր անմեղութիւնը ցուցնելով՝ իր թշնամիներուն չարութեանը դէմ կ'աղօթէ ։ 10 Անիկայ հաւատքով կը տեսնէ իր պաշտպանութիւնը , ու իր թշնամիներուն կործանումը։

† Շիկկայօն Դաւթի ․ որ երգեց Տէրոջը՝ * Բենիամինեան Քուշին խօսքերուն համար ։

1 Ո՛վ իմ Տէր Աստուածս՝ քեզի կը
յուսամ , ա փրկէ՛ զիս իմ ամէն
հալածիչներէս , ու ազատէ՛ զիս ,
2 բ Չըլլայ որ առիւծի պէս իմ
անձս փառատէ , ու գ պատառէ ,
և ազատող մը չըլլայ ։
3 Ո՛վ իմ Տէր Աստուածս՝ դ թէ
որ աս բանը ըրի , կամ թէ ե իմ
ձեռքերուս մէջը անօրէնութիւն
կայ ,
4 Թէ որ բարեկամիս չարութիւն
ըրի , ու զ յափշտակեցի զանիկայ՝ որ
առանց պատճառի իմ թշնամիս էր ,
5 Թող թշնամին հալածէ իմ անձս՝
ու հասնի անոր ․ ու երկրի վրայ
կոխկրտէ իմ կեանքս , և իմ
փառքս հողի վրայ բնակեցընէ ։
(Սէլայ ։)
6 Ելի՛ր ո՛վ Տէր , քու բարկութեամբդ , է իմ թշնամեացս կատաղութիւններուն դէմ բարձր եղի՛ր , և քու հրամայած դատաստանիդ՝ ը ինծի համար արթընցի՛ր ։
7 Ու ժողովուրդներուն ժողովը քու
չորս կողմդ պիտի պատէ ․ անոնց
համար դէպ 'ի բարձրը դարձի՛ր ։
8 Տէրը պիտի դատէ ժողովուրդները ․ ո՛վ Տէր՝ իմ դատաստանս
տե՛ս , ժ իմ ունեցած արդարութեանս ու անմեղութեանս նայելով ։
9 Ամբարիշտներուն չարութիւնը
թող հատնի ․ բայց դուն արդարը
հաստատէ՛ ․ ի վասն զի դուն՝ ո՛վ արդար Աստուած , կը քննես սիրտերը
ու երիկամունքները ։
10 Իմ պաշտպանութիւնս Աստուծմէ է , ան որ կ'ապրեցընէ Լսրտով
ուղիղները ։
11 Աստուած արդար դատաւոր է ․
ու Աստուած ամէն օր
բարկացած է ․
12 Թէ որ անիկայ չդառնայ , խ իր
սուրը պիտի սրէ ․ աղեղը լարեր ու
պատրաստեր է ․
13 Ու մահու գործիքները անոր համար պատրաստեր է ․ ծ իր նետերը
‡ կրակոտ շիներ է ։
14 կ Ահա անօրէնութեան երկունքը
բռնեց զանիկայ ․ չարութիւն յղացաւ ու ստութիւն ծնաւ ։
15 Հոր փորեց ու խորունկցուց ,
հ բայց իր շինած փոսին մէջը ինքը
պիտի իյնայ ․
16 ձ Անոր չարութիւնը իր գլուխը
պիտի դառնայ , ու անոր բռնութիւնը իր գագաթին վրայ պիտի
իջնէ ։
17 Գոհութիւն պիտի մատուցանեմ
Տէրոջը իր արդարութեանը համար․
ու սաղմոս պիտի երգեմ Բարձրեալ
Տէրոջը անուանը ։

## ՍԱՂՄ · Ը

1—9 Աստուծոյ փառքը յայտնի կ'ըլլայ իր գործքերէն՝ ու մարդոց վրայ իր ունեցած սէրէն ։

Գլխաւոր երգեցողին , * ‖ Գիթթիթի վրայ ․ Սաղմոս Դաւթի ։

1 Ո՛վ Տէր՝ մեր Տէրը , ի՜նչ ա փառաւոր է քու անունդ բոլոր երկրի վրայ ․ որ բ քու փառքդ երկինքներէն վեր դրիր ։
2 գ Մանկանց ու կաթնկեր տղայոց բերնէն § գովութիւն կատարեցիր քու թշնամիներուդ համար ,

* Տես ամՄն. ժե. 21։ Սաղ. ժբ. ին վերնագիրը։
* Այ՝ ութերորդի։
ա Սաղ. լը. 1։ Երեմ. ժ. 24։ Խղ. 28։
բ Սաղ. խա. 4։
գ Ովս. զ. 1։
դ Սաղ. ղ. 13։
ե Սաղ. լ. 9։ ձը. 11։ ճժե. 17։ ճժը. 17։ Ես. լը. 18։
զ Յոբ. ժէ. 7։ Սաղ. լա. 9։ լը. 10։ ձը. 9։ Ողբ. ե. 17։
է Սաղ. ճժթ. 115։ Մատ. է. 23։ իե. 41։ Ղու. ժգ. 27։
ը Սաղ. գ. 4։
† Կամ՝ Մեղեդի. տես Ամբ. գ. 1։
* Բ Թագ. ժզ։
ա Սաղ. լա. 15։
բ Ես. լը. 13։
գ Սաղ. ծ. 22։
դ Բ Թագ. ժզ. 7. 8։
ե Ա Թագ. իդ. 11։
զ Ա Թագ. իդ. 7։ իզ 9։

է Սաղ. ղդ. 2։
ը Սաղ. խդ. 23։
ժ Սաղ. ժը. 20։ լե. 24։
ի Ա Թագ. ժզ. 7։ Ա Մն. իը. 9։ Սաղ. ճլթ. 1։ Երեմ. ժա. 20։ ժէ. 10։ ի. 12։ Յայտ. բ. 23։
լ Սաղ. ճիե. 4։
խ Բ Օր. լբ. 41։
ծ Բ Օր. լբ. 23. 42։ Սաղ. կդ. 7։
‡ Կամ՝ հալածիչներուն համար
կ Յոբ. ժե. 35։ Ես. լդ. 11։ ծթ. 4։ Յակ. ա. 15։
հ Եսթ. է. 10։ Յոբ. դ. 8։ Սաղ. թ. 15։ ժ. 2։ լե. 8։ ղդ. 23։ Առակ. ե. 22։ իզ. 27։ Ժող. ժ. 8։
ձ Գ Թագ. բ. 23։ Եսթ. թ. 25։

* Սաղ. ձա. և ձդ. ին վերնագիրը։
‖ Կը կարծուի թէ երաժշտական նուագարանի անուն է։
ա Սաղ. ճխը. 13։
բ Սաղ. ճժգ. 4։
գ Տես Մատ. ժա. 25։ իա. 16։ Ա Կոր. ա. 27։
§ Կամ՝ Զօրութիւն

որ ե Թշնամին ու վրէժխնդիրը լռեցընես ։
3 Երբոր նայեմ երկինքդ՝ քու մատներուդ գործքը , լուսինը ու աստղերը՝ որոնք դուն հաստատեցիր ,
4 է Մարդը ի՞նչ է՝ որ զանիկայ կը յիշես , կամ մարդու որդին , որ անոր այցելութիւն կ'ընես ։
5 Քիչ մը վար ըրիր զանիկայ հրեշտակներէն . փառքով ու պատուով պսակեցիր զանիկայ ։
6 ը Քու ձեռացդ գործքերուն վրայ կեցուցիր զանիկայ . Ամէն բան անոր ոտքին տակը դրիր ։
7 Բոլոր ոչխարները ու արջառները , նաեւ վայրենի անասունները ,
8 Երկինքի թռչունները , ու ծովուն ձուկերը՝ և ինչ որ ծովու ճամբաներուն մէջէն կը պտըտի ։
9 ժ Ո՛վ Տէր՝ մեր Տէրը , ի՜նչ փառաւոր է քու անունդ բոլոր երկրի վրայ ։

## ՍԱՂՄ. Թ

1 Դաւիթ զԱստուած կը գովաբանէ՝ անոր դատաստաններուն համար ։ 11 Ուրիշներն ալ կը յորդորէ որ զանիկայ գովաբանեն ։ 13 Աղօթելով կը խնդրէ որ զանիկայ գովաբանելու առիթ ունենայ ։

Գլխաւոր երգեցողին Մութլապպէնի վրայ . Սաղմոս Դաւթի ։

1 Գոհութիւն պիտի մատուցանեմ Տէրոջը՝ իմ բոլոր սրտովս քու ամէն սքանչելիքներդ պիտի պատմեմ ։
2 ա Քեզմով ուրախ պիտի ըլլամ ու ցնծամ . քու անուանդ սաղմոս պիտի երգեմ ով բ Բարձրեալ ։
3 Թշնամիներս ետ դառնալու ատենին՝ քու երեսէդ պիտի իյնան ու կորսուին ։
4 Վասն զի դատաստանս և իրաւունքս դուն տեսար . աթոռին վրայ նստար էիր և արդարութեան դատաւոր ։
5 Հեթանոսները յանդիմանեցիր . ամբարիշտը կործանեցուցիր . գ անոնց անունները ջնջեցիր յաւիտեանս յաւիտենից ։
6 Թշնամիին աւերմունքները բոլորովին վերջացան . քաղաքները աւրեցիր . անոնց յիշատակը իրենց հետ կորսուեցաւ ։
7 դ Բայց Տէրը յաւիտեան կը մնայ անիկայ իր աթոռը պատրաստեց դատաստանի համար ։
8 ե Ինքը պիտի դատէ աշխարհքը արդարութիւնով . ժողովուրդներուն դատաստան պիտի ընէ ուղղութիւնով ։
9 զ Տէրն ալ ապաւէն պիտի ըլլայ տնանկին , ապաւէն նեղութեան ժամանակները ։
10 Եւ անոնք որ է քու անունդ գիտեն՝ քեզի պիտի յուսան . վասն զի քեզ փնտռողները՝ ով Տէր , երբեք չձգեցիր ։
11 Սաղմոս երգեցէք Տէրոջը՝ որ Սիօնը կը բնակի . ը ժողովրդոց մէջ պատմեցէք անոր ըրածները ։
12 թ Վասն զի արեան վրէժխնդիրը յիշեց զանոնք . չմոռցաւ նեղեալներուն աղաղակը ։
13 Ով Տէր՝ ողորմէ ինծի , տես իմ թշնամիներէս կրած նեղութիւնս , դուն որ զիս մահուան դռներէն կը վերցընես .
14 Որպէս զի քու ամէն գովութիւններդ պատմեմ Սիօնի աղջկանը դռներուն մէջ . ժ պիտի ցնծամ քու փրկութիւնովդ ։
15 ի Հեթանոսները իրենց շինած փոսին մէջը ընկղմեցան . իրենց դաղտուկ լարած որոգայթին մէջը իրենց ոտքը բռնուեցաւ ։
16 լ Տէրը ճանչցուած է , ինչ որ դատաստան ըրաւ . ամբարիշտը իր ձեռքին գործքերովը որոգայթը կ'իյնայ ։ (* Հիկկայօն . Սէլայ ։)
17 Ամբարիշտները դժոխքը պիտի դառնան , և ամէն ազգերը՝ խ որ զԱստուած կը մոռնան ։
18 ծ Բայց աղքատը պիտի չմոռցուի մինչեւ վերջը . կ տնանկներուն յոյսը յաւիտեան պիտի չկորսուի ։
19 Ելիր ով Տէր , մարդը չզօրանայ . թող հեթանոսները դատուին քու առջեւդ ։
20 Ով Տէր՝ + զանոնք վախցուր . թող հեթանոսները ճանչնան թէ իրենք մարդ են ։ (Սէլայ ։)

## ‡ ՍԱՂՄ. Ժ

1 Դաւիթ Աստուծոյ կը գանգատի չարերուն ամբարտաւանութեանը համար ։ 12 օգնութիւն կը խնդրէ ։ 16 իր վստահութիւնը կը խոստովանի ։

1 Ո՛վ Տէր՝ ինչո՞ւ հեռու կը կենաս նեղութեան ժամանակները անտես կ'ըլլաս ։
2 ‖ Ամբարիշտը իր ամբարտաւանութիւնովը սաստիկ կը հալածէ աղքատը . ա իրենց խորհած չարքերուն մէջը թող բռնուին ։
3 Վասն զի ամբարիշտը բ իր անձին ցանկութիւնովը կը պարծենայ , § ու գ Տէրը մերժող ագահը կը գովէ ։
4 Ամբարիշտը իր երեսին ամբարտաւանութեանը համար դ զԱստուած չփնտռեր . բոլորովին ե անոր մտքին մէջը Աստուած չկայ ։

ե Սաղ. խդ. 16։
զ Սաղ. ճժա. 2։
է Յոբ. է. 17։ Սաղ. ճխդ. 3։ Եբր. բ. 6։
ը Ծն. ա. 26, 28։ Ա Կոր. ժե. 27։ Եբր. բ. 8։
ժ Հմր 1։
ա Սաղ. ե. 11։
բ Սաղ. ձգ. 18։
գ Օր. թ. 14։ Առակ. ժ. 7։
դ Սաղ. ճբ. 12, 26։ Եբր. ա. 11։
ե Սաղ. ղա. 13։ ղը. 9։
զ Սաղ. լբ. 7։ լէ. 39։ Խղ. 1։ Դա. 2։
է Սաղ. ղա. 14։
ը Սաղ. ճէ. 22։
թ Ծն. թ. 5։
ժ Սաղ. ժդ. 5։ ի. 5։ լե. 9։
ի Սաղ. է. 15, 16։ լե. 8։ ծէ. 6։ Դդ. 23։ Առակ. ե. 22։ իբ. 8։ իզ. 27։
լ Ել. է. 3։ ժդ. 4, 10, 31։
* Եբ. մտածութիւն։
խ Յոբ. ը. 13։ Սաղ. ծ. 22։
ծ Հմր 12։ Սաղ. ժբ. 5։
կ Առակ. իդ. 18։ իգ. 14։
+ Կամ՝ ահ անոնց վրայ սորվեցուր։
‡ Այս ժ-երորդ Սաղմոսը Եօթանասնից եւ Հայերէն թարգմանութեանց մէջ թ-երորդին շարունակութիւնն է, որով այս թարգմանութեանց մէջ ժԱ երորդը՝ անոնց մէջ ժ երորդ սեպուած է, ու այսպէս կը շարունակուի մինչեւ ճԽԷ երորդը։ Տե՛ս [illegible]
‖ Կամ՝ Ամբարիշտին ամբարտաւանութեանը պատճառաւ աղքատը կ'այրի կը տոչորի։

ա Սաղ. է. 16։ թ. 15, 16։ Առակ. ե. 22։ բ Սաղ. գդ. 4։ § Կամ՝ ու կը գովէ ագահը, եւ կը մերժէ Տէրը, եւ Կամ՝ ու կը գովէ ագահը՝ որն որ Տէրը կը մերժէ։ գ Առակ. իբ. 4։ Հռով. ա. 32։ դ Սաղ. ժդ. 2։ ե Սաղ. ժդ. 1։ ծդ. 1։

5 Ամէն ժամանակ անոր ճամբաները պինդ են. Քու դատաստաններդ անոր առջեւէն բարձր են. [ե]Անիկայ իր բոլոր թշնամիներուն վրայ կը փչէ։
6 [զ]Իր սրտին մէջը ըսաւ թէ՝ Պիտի չսասանիմ. [է]Վասն զի ազգէ մինչեւ ազգ նեղութեան մէջ պիտի չըլլամ։
7 [ը]Անոր բերանը անէծքով ու նենգութիւններով ու հարստահարութիւնով լեցուն է. [թ]Անիրաւութիւնը ու անօրէնութիւնը անոր լեզուին տակն են։
8 Գեղերուն դարանի տեղուանքը կը նստի. [ժ]Գաղտուկ տեղերու մէջ անմեղը կը սպաննէ. [ի]Անոր աչքերը ծածկաբար տնանկներուն կը նային։
9 [լ]Գաղտուկ տեղեր դարանամուտ կ'ըլլայ, ինչպէս որ առիւծը իր որջին մէջ. դարանակալ կը նստի՝ աղքատը յափշտակելու համար. աղքատը կը յափշտակէ՝ իր որոգայթը ձգելով զանիկայ։
10 Ու կծկտած կը պառկի, և տնանկները անոր ճանկերուն տակը կ'իյնան։
11 Իր սրտին մէջ ըսաւ թէ՝ Աստուած մոռցեր է, [խ]իր երեսը ծածկեր է՝ որ բնաւ չտեսնէ։
12 Ելի՛ր ով Տէր. ով Աստուած՝ [ծ]ձեռքդ վե՛ր վերցուր. մի՛ մոռնար նեղեալները։
13 Ինչու համար ամբարիշտը կ'անարգէ զԱստուած. իր սրտին մէջը ըսաւ թէ՝ Պիտի չքննես։
14 Դուն տեսար, ինչու որ ցաւին ու նեղութեանը կը նայիս, քու ձեռքովդ փոխարէն հատուցանելու համար։ [կ]Աղքատը ինքզինքը քեզի կը յանձնէ. [հ]որբին օգնականը դուն ես։
15 [ձ]Ամբարշտին բազուկը կոտրէ, ու չարին անօրէնութիւնը փնտռէ՝ մինչեւ որ ալ չգտնես։
16 [ղ]Տէրը յաւիտեանս յաւիտենից թագաւոր է. հեթանոսները կորսուած են անոր երկրէն։
17 Տնանկներուն ցանկութիւնը լսեցիր, ով Տէր. [ճ]անոնց սիրտերը պիտի հաստատես, ու քու ականջդ պիտի տաս,
18 [մ]Որբին ու տնանկին դատաստանը տեսնելու, որ երկրէն մարդը ալ անգամ չվախցընէ։

դ Ես. իզ. 11. ե Սաղ. ժբ. 5. զ Սաղ. լ. 6. Ժող. ը. 11. Ես. ծզ. 12. է Յայտ. ժը. 7. ը Հռով. գ. 14. թ Յոբ. ի. 12. Սաղ. ժբ. 2. ժ Ամբ. գ. 14. ի Սաղ. ժէ. 11. լ Սաղ. ժէ. 12. Միք. է. 2. խ Յոբ. իբ. 13. Սաղ. հդ. 11. ղդ. 7. Եզեկ. ը. 12. թ. 9. ծ Միք. ե. 9. կ Բ Տիմ. ա. 12. Ա Պետ. դ. 19. հ Սաղ. կը. 5. Ովս. ժդ. 3. ձ Սաղ. լէ. 17. ղ Սաղ. իթ. 10. Ճխե. 13. Ճխզ. 10. Երեմ. ժ. 10. Ողբ. ե. 19. Դան. դ. 34. զ. 26. Ա Տիմ. ա. 17. ճ Ա Մն. իթ. 18. մ Սաղ. ձբ. 3. Ես. ժա. 4.

## ՍԱՂՄ. ԺԱ

1 Դաւիթ Աստուծով կը զօրանայ իր թշնամիներուն դէմ. 4 Աստուծոյ նախախնամութիւնը ու արդարութիւնը.

Գլխաւոր երգեցողին. Սաղմոս Դաւթի.

1 [ա]Տէրոջը ապաւինեցայ. [բ]ի՞նչպէս իմ անձիս կ'ըսէք թէ՝ Թռչունի պէս դէպ ՚ի ձեր լեռը թռչէ.
2 Վասն զի ահա [գ]մեղաւորները աղեղ լարեցին. [դ]իրենց նետերը լարին վրայ պատրաստեցին, որ մութ տեղէն սիրտը շիտակ եղողներուն նետեն։
3 [ե]Եթէ որ հիմերը կործանին, արդարը ի՞նչ պիտի ընէ։
4 [զ]Տէրը իր սուրբ տաճարին մէջն է. Տէրոջը [է]աթոռը երկինքն է. [ը]Անոր աչքերը կը տեսնեն, անոր թարթիչները կը քննեն մարդոց որդիները։
5 Տէրը [թ]կը քննէ արդարը. բայց անոր անձը կ'ատէ ամբարիշտը ու բռնութիւն սիրողը։
6 [ժ]Ամբարիշտներուն վրայ պիտի տեղայ *որոգայթներ, հուր, և ծծումբ ու խորշակ. [ի]ասոնք պիտի ըլլայ անոնց բաժակին բաժինը։
7 [լ]Բայց արդար Տէրը արդարութիւնը կը սիրէ. [խ]անոր երեսը ուղիղին կը նայի։

## ՍԱՂՄ. ԺԲ

Դաւիթ մարդկային մխիթարութենէ զուրկ մնալով՝ Աստուծմէ օգնութիւն կը խնդրէ. 3 Աստուծոյ չարերուն ըրած դատաստաններովը՝ ու Աստուծոյ հաւատարիմ խոստումներովը՝ ինքզինքը կը քաջալերէ.

Գլխաւոր երգեցողին. [ա]Շէմինիթի վրայ. Սաղմոս Դաւթի.

1 Ո՛վ Տէր փրկէ, վասն զի սուրբը չմնաց. վասն զի [բ]հաւատարիմները մարդոց որդիներուն մէջէն պակսեցան։
2 [գ]Ամէն մարդ սուտ կը խօսի իր ընկերին հետ. [դ]շողոքորթող շրթունքներով ու կրկին սրտով կը խօսին։
3 Տէրը պիտի կտրէ ամէն շողոքորթող շրթունքները, ու [ե]մեծախօս լեզուն.
4 Որ ըսին թէ՝ Լեզուներովնիս պիտի յաղթենք. շրթունքներնիս մերն է, մեր վրայ տիրող ո՞վ պիտի ըլլայ։
5 Աղքատներուն տառապանքին ու տնանկներուն հեծութեանը համար՝ [զ]հիմա պիտի ելլեմ, կ'ըսէ Տէրը. ազատութեան մէջ պիտի դնեմ զանիկայ որ [է]կը փչուի։
6 Տէրոջը խօսքերը [ը]մաքուր խօսքեր են, բովի մէջ հողէն զտուած՝ ու եօթը անգամ մաքրուած արծաթի պէս են։
7 Ո՛վ Տէր՝ դուն պիտի պահես անոնք, ու պիտի պաշտպանես աս ազգէն մինչեւ յաւիտեան։
8 Ամբարիշտները ամէն կողմ կը պտըտին, երբոր մարդոց որդիներուն մէջը անարգները բարձրանան։

ա Սաղ. ծզ. 11. բ Տես Ա Թագ. իզ. 19, 20. գ Սաղ. կդ. 3, 4. դ Սաղ. իա. 12. ե Սաղ. ձբ. 5. զ Ամբ. բ. 20. է Սաղ. բ. 4. Ես. կզ. 1. Մատ. ե. 34. իգ. 22. Գործ. է. 49. Յայտ. դ. 2. ը Սաղ. լդ. 13. լգ. 15, 16. կզ. 7. թ Ծն. իբ. 1. Յակ. ա. 12. ժ Ծն. ժթ. 24. Եզեկ. լը. 22. * կամ՝ փայլակներ. ի Տես Ծն. խգ. 34. Ա Թագ. ա. 4. թ. 23. Սաղ. հե. 8. լ Սաղ. խե. 7. Ճխզ. 8. խ Յոբ. լզ. 7. Սաղ. լգ. 18. լդ. 15. Ա Պետ. գ. 12.

ա Սաղ. զ. ին վերնագիրը. բ Ես. ծէ. 1. Միք. է. 2. գ Սաղ. ժ. 7. դ Սաղ. իը. 3. կբ. 4. Երեմ. թ. 8. Հռով. ժզ. 18. ե Ա Թագ. բ. 3. Սաղ. ժէ. 10. Դան. է. 8, 25. զ Ես. լգ. 7, 8. Ես. լգ. 10. է Սաղ. ժ. 5. ը Բ Թագ. իբ. 31. Սաղ. ժը. 30. ժթ. 8. ճժթ. 140. Առակ. լ. 5.

## ՍԱՂՄ. ԺԳ

1 Դաւիթ օգնութեանը ուշանալուն համար կը գանգատի 3 կանխահաս մահուան համար աղօթք կ՚ընէ 5 աստուածային ողորմութեամբ կը պարծի.

Գլխաւոր երգեցողին. Սաղմոս Դաւթի։

1 Ո՛վ Տէր՝ մինչեւ ե՞րբ բոլորովին զիս պիտի մոռնաս. ա մինչեւ ե՞րբ քու երեսդ ինծմէ պիտի ծածկես.
2 Մինչեւ ե՞րբ մտքիս մէջը հոգեր պիտի դնեմ. ամէն օր սրտիս մէջը տրտմութիւն ունենալով. մինչեւ ե՞րբ թշնամիս իմ վրաս պիտի բարձրանայ.
3 Նայէ ո՛վ իմ Տէր Աստուածս, ու պատասխան տուր ինծի. բ լուսաւորէ իմ աչքերս, գ որ մահուան քունը չքնանամ.
4 դ Չըլլայ որ թշնամիս ըսէ թէ Յաղթեցի անոր. ու իմ ինծի դէմ կեցողները խնդան իմ սասանելուս ատենս։
5 Ես քու ողորմութեանդ ե յուսացայ. իմ սիրտս քու փրկութիւնովդ պիտի ցնծայ.
6 Պիտի երգեմ Տէրոջը, ինչու որ ինծի զ բարերարութիւն ըրաւ։

ա Օր. լա. 17։ Յոբ. ժգ. 24։ Սաղ. խդ. 24։ ձը. 14։ ձթ. 46։ Եսա. ծթ. 2։
բ Եզր. թ. 8։
գ Երեմ. ծա. 39։
դ Սաղ. իե. 2։ լե. 19։ լը. 16։
ե Սաղ. լգ. 21։
զ Սաղ. ճժզ. 7։ ճժթ. 17։

## ՍԱՂՄ. ԺԴ

1 Դաւիթ մարմնաւոր մարդուն ապականութիւնը կը ստորագրէ. 4 չարերը կը յանդիմանէ անոնց խղճմտանքին լուռելը. 7 Աստուծոյ փրկութեամբը կը պարծի.

Գլխաւոր երգեցողին. Սաղմոս Դաւթի.

1 ա Անզգամը իր սրտին մէջ ըսաւ թէ Աստուած չկայ. բ Ապականեցան ու պիղծ գործքեր ըրին. մէկ մը չկայ որ աղէկութիւն ընէ։
2 գ Տէրը երկինքէն նայեցաւ մարդոց որդիներուն վրայ, որ տեսնէ թէ կա՞յ արդեօք իմաստուն մէկը որ զԱստուած փնտռէ։
3 դ Ամէնքը խոտորեցան. մէկտեղ անպիտան եղան. աղէկութիւն ընող մը չկայ, մէկ մըն ալ չկայ։
4 Միթէ չե՞ն ճանչնար ամէն անօրէնութիւն ընողները. որոնք հաց ուտելու պէս ե իմ ժողովուրդս կ՚ուտեն, ու զ Տէրոջը չեն կանչեր.
5 Հոն ատենը է շատ վախցան. քանզի Աստուած արդարներուն ազգին մէջն է.
6 Աղքատին խորհուրդը ամօթով ըրիք * սակայն անոր ը յոյսը Տէրն է.
7 թ Երանի թէ Սիօնէն գար Իսրայէլին փրկութիւնը. ժ Տէրը իր ժողովուրդը գերութենէն դարձուցած ատենը. Յակոբը պիտի ցնծայ, ու Իսրայէլը ուրախ պիտի ըլլայ.

ա Սաղ. ժ. 4։ ծգ. 1, եւ։
բ Ծն. զ. 11, 12։ Հռով. գ. 10, եւ։
գ Սաղ. լգ. 13։ ճբ. 19։
դ Հռով. գ. 10, 11, 12։
ե Երեմ. դ. 25։ Ամով. ը. 4։ Միք. գ. 3։
զ Սաղ. հթ. 6։ Եսա. կգ. 7։
է Սաղ. ծգ. 5։
* Կամ՝ քանզի
ը Սաղ. թ. 9։ ճխբ. 5։
թ Սաղ. ծգ. 6։ Տես Հռով. ժա. 26։
ժ Յոբ. խբ. 10։ Սաղ. ճիզ. 1։

## ՍԱՂՄ. ԺԵ

1—5 Դաւիթ Սիօնի բնակիչ մը կը ստորագրէ.

Սաղմոս Դաւթի։

1 Տէ՛ր ա ո՞վ պիտի կենայ քու վրանիդ մէջը. ո՞վ պիտի բնակի բ քու սուրբ լեռանդ վրայ։
2 գ Ան որ անմեղութեամբ կը քալէ. ու արդարութիւն կը գործէ, և դ ճշմարտութիւն կը խօսի իր սրտին մէջը,
3 ե Ան որ լեզուովը չբամբասեր, ընկերին չարութիւն չըներ, զ և իր դրացիին վրայ նախատինք չդներ.
4 է Որուն աչքին անարգուած է չարագործը. բայց աստուածավախները կը պատուէ. ը երդում կ՚ընէ իր * դրացիին ու չդառնար.
5 թ Իր արծաթը վաշխքով չտար, ժ ու անմեղին դէմ կաշառք չառներ. ով որ ասոնք կ՚ընէ, յաւիտեան պիտի չսասանի։

ա Սաղ. իդ. 3, եւ։
բ Սաղ. բ. 6։ գ. 4։
գ Եսա. լգ. 15։
դ Զաք. ը. 16։ Եփես. դ. 25։
ե Ղեւ. ժթ. 16։ Սաղ. լգ. 13։
զ Ել. իգ. 1։
է Եսթ. գ. 2։
ը Դատ. ժա. 35։
* Կամ՝ վնասելու
թ Ել. իբ. 25։ Ղեւ. իե. 36։ Բ Օր. իգ. 19։ Եզեկ. ժը. 8։ իբ. 12։
ժ Ել. իգ. 8։ Բ Օր. ժզ. 19։
ժա Սաղ. ժզ. 8։

## ՍԱՂՄ. ԺԶ

1 Դաւիթ իր բարի գործքերուն վրայ չվստահանալով ու կատարելութիւնը առնելով Աստուծոյ կը դիմէ ապաշխարութեան համար. 5 Իր կոչմանը. յարութեան. ու յաւիտենական կենաց յոյսը կը ցուցնէ.

Երգ Դաւթի.

1 Ո՛վ Աստուած՝ զիս պահէ. ա ինչու որ քեզի յուսացայ.
2 Տէրոջը ըսի. Իմ Տէրս դուն ես, առանց քեզի բարիք մը չունիմ.
3 Երկրիս մէջ եղող սուրբերուն ու պատուականներուն՝ անոնց վրայ է իմ բոլոր հաճութիւնս.
4 Անոնց ցաւերը պիտի շատնան. որոնք որ ուրիշի մը կ՚արտորան անոնց արիւնի նուէրները պիտի չնուիրեմ բ ու անոնց անունները շրթունքներուս վրայ պիտի չառնեմ։
5 գ Տէրն է իմ ժառանգութեանս ու դ բաժակիս բաժինը. իմ վիճակս դուն պիտի պահես.
6 Վիճակներ ելան ինծի զուարճալի տեղերու մէջ. իրաւ իմ ժառանգութիւնս ինծի հաճելի եղաւ.
7 Պիտի օրհնեմ Տէրը՝ որ զիս խրատեց. նաեւ ե իմ երիկամունքներս գիշերուան մէջ ինծի կը սորվեցնեն.
8 զ Ամէն ատեն Տէրը իմ առջիս դրի. որովհետեւ է իմ աջ կողմս է. ը պիտի չսասանիմ.
9 Ասոր համար սիրտս ուրախ եղաւ, թ ու * փառքս բերկրեցաւ. ու մարմինս ալ յուսով պիտի հանգստանայ.
10 ժ Վասն զի իմ անձս ‖ գերեզմանին մէջը պիտի չթողուս ու քու սուրբիդ ալ ապականութիւն տեսնել պիտի չտաս.

ա Սաղ. իե. 20։
բ Ել. իգ. 13։ Յես. իգ. 7։ Ովս. բ. 16, 17։
գ Բ Օր. լբ. 9։ Սաղ. հգ. 26։ ճժթ. 57։ Ողբ. գ. 24։
դ Սաղ. ժա. 6։
ե Սաղ. ժէ. 3։
զ Գործ. բ. 25, եւ։
է Սաղ. հգ. 23։ ճժ. 5։ ճիա. 5։
ը Սաղ. ժե. 5։
թ Սաղ. լ. 12։ ծէ. 8։
* Կամ՝ լեզուս
‖ Կամ՝ դժոխքին
ժ Սաղ. խթ. 15։ Գործ. բ. 27, 31։ ժգ. 35։

11 է Կեանաց ճամբան ինծի պիտի ցուցընես. Ներեսիդ առջին լեցուն ուրախութիւն կայ. Էքու աջ կողմդ միշտ հաճութիւններ կան։

## ՍԱՂՄ. ԺԷ

1 Դաւիթ իր անկեղծութեանը վրայ վստահելով՝ Աստուծմէ պաշտպանութիւն կը խնդրէ իր թշնամիներուն դէմ։ 10 Անոնց ամբարտաւանութիւնը, խորամանկութիւնը ու բռնութիւնը կը ցուցընէ։ 13 Իր ունեցած յոյսին վստահութիւնովը անոնց դէմ աղօթք կ'ընէ։

Աղօթք Դաւթի։

1 Ո՛վ Տէր՝ լսէ արդարութիւնը. մտիկ ըրէ իմ աղաղակս. ականջ դիր աղօթքիս, որ խաբեբայ շրթունքներով չէ։
2 Իմ դատաստանս քու երեսէդ թող ելլէ. քու աչքերդ ուղղութիւնը թող տեսնեն։
3 Իմ սիրտս փորձեցիր. ա գիշեր ատեն քննեցիր. բ զիս կրակով փորձեցիր, ու բան մը չգտար. *միտքս դրի որ բերանս պատուիրանազանց չըլլայ"։
4 Մարդոց գործքերուն նայելով՝ քու շրթունքներուդ խօսքերովը ես բռնաւորին ճամբաներէն զգուշացայ։
5 գ Իմ քայլերս քու ճամբաներուդ մէջը պահէ՛, որ իմ դնացքներս չսասանին։
6 դ Ես քեզի կանչեցի, ինչու որ ինծի պատասխան պիտի տաս, ո՛վ Աստուած. խոնարհեցո՛ւր ինծի քու ականջդ, լսէ իմ խօսքս։
7 ե Սքանչելի կերպով քու ողորմութիւններդ ցուցո՛ւր, դուն որ քեզի յուսացողները աջ ձեռքովդ կ'ազատես հակառակ կեցողներէն։
8 զ Աչքի բիբի պէս զիս պահէ՛, է թեւերուդ հովանաւորութեանը տակը զիս ծածկէ՛
9 Ինծի տառապանք տուող ամբարիշտներուն երեսէն. իմ անձիս թշնամիները զիս պաշարեցին։
10 ը Իրենց պարարտութիւնովը ծածկուեցան, իրենց բերնովը թ ամբարտաւանութեամբ խօսեցան։
11 Հիմա քայլերնուս ժ չորս կողմը պատելով՝ ի աչքերնին մեր վրայ տնկեցին դետինը զարնելու համար,
12 Առիւծի պէս՝ որ կը փափաքի յափշտակելու, առիւծի կորիւնի պէս՝ որ դարանակալ կ'ըլլայ։
13 Ելի՛ր ո՛վ Տէր՝ անոր առջևը ելիր, օձնորդ հասիր. զանիկայ գետինը զարկ. Նրու սրովդ փրկէ իմ անձս ամբարիշտներէն,
14 Քու ձեռքովդ մարդիկներէն՝ ո՛վ Տէր, աշխարհի մարդիկներէն՝ ի որոնց բաժինը ու կեանքիս մէջն է, ու անոնց փորերը շտեմարաններէդ կը լեցընես. ժ անոնց որդիքն ալ կը կշտանան, ու իրենցմէ աւելցածը իրենց տղոցը կը թողուն։
15 Իսկ ես ծ արդարութեամբ պիտի տեսնեմ քու երեսդ. երբոր արթըննամ՝ կ քու դէմքէդ պիտի կշտանամ։

## ՍԱՂՄ. ԺԸ

1—50 Դաւիթ կը գովաբանէ զԱստուած իր բազմապատիկ և զարմանալի բարիքներուն համար։

Գլխաւոր երգեցողին. ա Տէրոջը ծառային Դաւիթին Սաղմոսը, որ ըսաւ Տէրոջը՝ բ այս երգին խօսքերը ան օրը՝ որ Տէրը ազատեց զանիկայ իր ամէն թշնամիներուն ձեռքէն, և Սաւուղին ձեռքէն. ու ըսաւ.

1 գ Ո՛վ Տէր՝ իմ զօրութիւնս՝ քեզ պիտի սիրեմ։
2 Տէրը իմ վէմս, ամրութիւնս, ու փրկիչս է։ Իմ Աստուածս իմ պարիսպս է, դ ես անոր կը յուսամ. անիկայ իմ վահանս՝ ու իմ փրկութեանս եղջիւրը՝ ու իմ բարձր աշտարակս է։
3 ե Օրհնեալ Տէրը կը կանչեմ, ու իմ թշնամիներէս կ'ազատիմ։
4 զ Մահուան լարերը իմ բոլորտիքըս առին, ու անօրէնութեան հեղեղները զիս վախցուցին։
5 Գերեզմանին լարերը զիս պաշարեցին, ու մահուան որոգայթները իմ առջևս առին։
6 Իմ նեղութեանս մէջ՝ Տէրոջը կանչեցի, ու իմ Աստուծոյս աղաղակեցի. անիկայ իր տաճարէն իմ ձայնս լսեց, ու իմ աղաղակս անոր առջևը՝ անոր ականջը հասաւ։
7 է Ան ատենը երկիրը սասանեցաւ ու դողաց, ու լեռներուն հիմերը շարժեցան ու սասանեցան. քանզի Անիկայ բարկացաւ։
8 Անոր քիթէն ծուխ ելաւ, ու բերնէն մաշող կրակ. անկէ կայծակներ բռընկեցան։
9 ը Եւ անիկայ երկինքը խոնարհեցուց, ու իջաւ. և անոր ոտքերուն տակը մառախուղ կար։
10 թ Ու քերովբէի մը վրայ ելաւ, ու թռաւ. ու ժ հովին թևերուն վրայ սլացաւ։
11 Խաւարը իրեն ծածկոյթ դրաւ, ու ի իր բոլորտիքը իրեն բնակարան թանձր ջուրերը ու երկինքի ամպերը ըրաւ։
12 լ Անոր առջևը եղող պայծառութենէն՝ անոր ամպերը անցան կարկուտով ու կրակի կայծակներով։
13 Ու Տէրը երկինքին մէջը որոտաց, և Բարձրեալը ի իր ձայնը լսել տուաւ

է Մատ. է. 14։
ը Սաղ. ժե. 15։ իա. 6։ Մատ. ե. 8։ ա Կոր. ժգ. 12։ ա Յով. գ. 2։
ի Սաղ. լզ. 8։
ա Սաղ. ժզ. 7։
բ Յոբ. իգ. 10։ Սաղ. իզ. 2։ կզ. 10։ Ճլթ. 1։ Զաք. ժգ. 9։ Մաղ. գ. 2, 3։ ա Պետ. ա. 7։
* Կամ՝ Բերանս իմ խորհուրդէս պիտի չհեռանայ։
գ Սաղ. ճժթ. 133։
դ Սաղ. ճժզ. 2։
ե Սաղ. լա. 21։
զ Բ Օր. լբ. 10։ Զաք. բ. 8։
է Հռութ. բ. 12։ Սաղ. լզ. 7։ ծէ. 1։ կա. 4։ կզ. 7։ ղա. 1, 4։ Մատ. իգ. 37։
ը Բ Օր. լբ. 15։ Յոբ. ժե. 27։ Սաղ. հզ. 7։ ճժթ. 70։
թ Թագ. բ. 3։ Սաղ. լա. 18։
ժ ա Թագ. իգ. 26։
ի Սաղ. ժ. 8, 9, 10։
լ Եսա. ժ. 5։
ի Սաղ. հզ. 12։ Ղուկ. ժզ. 25։ Յակ. ե. 5։
+ Կամ՝ Անոնք որդիներով
ծ ա Յով. գ. 2։
կ Սաղ. դ. 6, 7։ ժզ. 11։ կե. 4։
ա Սաղ. լզ. ին վերնագիրը։
բ բ Թագ. իբ։
գ Սաղ. ճխգ. 1։
դ Եբր. բ. 13։
ե Սաղ. հզ. 4։
զ Սաղ. ճժզ. 3։
է Գործ. դ. 31։
ը Սաղ. ճխգ. 5։
թ Սաղ. ղթ. 1։
ժ Սաղ. ճդ. 3։
ի Սաղ. ղէ. 2։
լ Սաղ. ղէ. 3։
ի Սաղ. իթ. 3։

կարկուտով ու կրակի կայծակնե-
րով ։
14 ծ Եւ իր նետերը խրկեց, ու զա-
նոնք ցրուեց. և շատ կայծակներ
խրկեց, ու զանոնք խռովեցուց ։
15 Եւ քու յանդիմանութիւնովդ՝
ո՛վ Տէր, քու բարկութեանդ հո-
վին փչելովը՝ կ Ջուրերուն յատակ-
ները երեցան, ու աշխարհիս հիմե-
րը յայտնուեցան ։
16 հ Բարձրէն խրկեց, ու զիս բռնեց.
ու շատ ջուրերէն զիս հանեց ։
17 Իմ զօրեղ թշնամիէս ու զիս ա-
տողներէն ազատեց զիս. վասն զի
ինծմէ զօրաւոր էին ։
18 Իմ նեղութեանս օրը իմ առջևս
առին. բայց Տէրը ինծի հաստա-
տութիւն գաւազան եղաւ.
19 ձ Եւ զիս լայնարձակ տեղ մը հա-
նեց, ու զիս ազատեց. ինչու որ
ինծի հաւնեցաւ ։
20 ղ Տէրը իմ արդարութեանս պէս՝
ինծի փոխարէն կու տայ. իմ ձե-
ռացս մաքրութեանը համեմատ՝
հատուցում կ'ընէ ինծի.
21 Վասն զի Տէրոջը ճամբաները
պահեցի, ու իմ Աստուծոյս դէմ
ամբարշտութիւն չըրի ։
22 Քանզի անոր ամէն դատաստան-
ները իմ առջևս էին. ու անոր օ-
րէնքները ինծմէ չհեռացուցի ։
23 Նաև անոր առջևը կատարեալ
եղայ, ու իմ անօրէնութենէս ըզ-
գուշացայ ։
24 ճ Եւ Տէրը ինծի հատուցում ը-
րաւ իմ արդարութեանս համեմատ,
իմ ձեռացս մաքրութեանը համե-
մատ՝ որ անոր աչքերուն առջևն է ։
25 մ յ Ողորմածին հետ ողորմած կ'ըլ-
լաս, կատարեալ մարդուն հետ կա-
տարեալ կ'ըլլաս.
26 Մաքուրին հետ մաքուր կ'ըլլաս,
ու ծռուռին հետ կը ծռիս ։
27 Վասն զի դուն՝ վշտացած ժողո-
վուրդը կ'ազատես, ու ն ամբար-
տաւան աչքերը կը ցածցընես ։
28 շ Քանզի դուն իմ ճրագս կը վա-
ռես. իմ Տէր Աստուածս իմ խա-
ւարս կը լուսաւորէ ։
29 Վասն զի քեզմով գունդի մը վը-
րայ կը վազեմ, ու իմ Աստուծովս
պարիսպէ կ'անցնիմ ։
30 ո Աստուծոյ ճամբան կատարեալ
է. չ Տէրոջը խօսքերը փորձուած
են. անիկայ պ ամէն իրեն յուսա-
ցողներուն ապաւէն է ։
31 ջ Քանզի Տէրոջմէն զատ ո՞վ է Աս-
տուած, կամ մեր Աստուծմէն զատ՝
ո՞վ է վէմ ։
32 Աստուած է որ ռ ինծի զօրութիւն
կը հագցնէ, ու իմ ճամբաս կա-
տարեալ կ'ընէ,
33 ս Իմ ոտքերս եղջերուի ոտքերուն

ծ Ցես. Ժ. 10. Սաղ. ճխդ. 6. Ես. Լ. 30.
կ Եզ. ժե. 8. Սաղ. ճզ. 9.
հ Սաղ. ճխդ. 7.
ձ Սաղ. լա. 8. ճժը. 5.
ղ Ա Թագ. իդ. 20.
ճ Ա Թագ. իզ. 23.
մ Գ Թագ. ը. 32.
յ Ղև. իզ. 23. 24. 27. 28. Առակ. գ. 34.
ն Սաղ. ճա. 5. Առակ. զ. 17.
շ Յոբ. ժը. 6.
ո Բ Օր. լբ. 4. Դան. դ. 37. Յայտ. ժե. 3.
չ Սաղ. ժբ. 6. ճժթ. 140. Առակ. լ. 5.
պ Սաղ. ժէ. 7.
ջ Բ Օր. լբ. 31. 39. Ա Թագ. բ. 2. Սաղ. ձդ. 8. Ես. խե. 5.
ռ Սաղ. ղա. 2.
ս Բ Թագ. ո. 18. Ամբ. գ. 19.

պէս կ'ընէ, ու տ իմ բարձր տեղե-
րուս վրայ զիս կը կայնեցընէ ։
34 վ Ձեռքերս պատերազմի կը վար-
ժէ, ու իմ *բազուկներս պղնձէ
աղեղ կը լարեն'' ։
35 Ինծի նաև քու փրկութեանդ աս-
պարը տուիր. և քու աջ ձեռքդ
զիս զօրացուց, ու քու քաղցրու-
թիւնդ զիս մեծցուց ։
36 Իմ քալելու ճամբաս ներքևս
լայնցուցիր. ր ու իմ ոտքիս յօ-
դուածները չսասանեցան ։
37 Իմ թշնամիներս հալածեցի, ու
անոնց հասայ, ու ետ չդարձայ՝
մինչև որ զանոնք հատցուցի.
38 Զանոնք գետինը զարկի, ու
կանգնելու կարող չեղան. անոնք
իմ ոտքերուս տակը ինկան ։
39 Ու պատերազմի համար՝ ինծի
զօրութիւն հագցուցիր. իմ վրաս
ելլողները տակս ձգեցիր ։
40 Ու իմ թշնամիներուս †կռնակը
ինծի դարձնել տուիր'', որ զիս ա-
տողները ջարդեմ ։
41 Աղաղակեցին, բայց ազատող
չկար. ց Տէրոջը աղաղակեցին, բայց
անոնց պատասխան չտուաւ ։
42 Ու զանոնք հովին առջևէն մղուած
փոշիի պէս մանրեցի, ւ փողոցնե-
րուն ցեխին պէս փ մէկդի ձգեցի զա-
նոնք ։
43 ք Ժողովուրդին կռիւներէն զիս
ազատեցիր, ու օ զիս ազգերու գը-
լուխ ըրիր. ֆ իմ չգիտցած ժողո-
վուրդս ինծի ծառայեց ։
44 Իրենց ականջներովը լսածնուն
պէս՝ ինծի հնազանդեցան. օտար-
ները §ինծի ‡խոնարհութիւն ըրին'' ։
45 ~ Օտարները տկարացան, և իրենց
պահուըտած տեղերէն դողացին ։
46 Տէրը կենդանի է, ու իմ Վէմս
օրհնեալ ըլլայ, և իմ փրկութեանս
Աստուածը բարձր ըլլայ ։
47 Աստուած է որ իմ վրէժս կը
խնդրէ, ք ու ժողովուրդները ինծի
կը հնազանդեցընէ ։
48 Իմ թշնամիներէս զիս կը փրկէ.
նաև ֆ զիս իմ վրաս ելլողներէն ա-
ւելի բարձրացուցիր, ու բռնաւոր
մարդէն զիս ազատեցիր ։
49 Ա Ասոր համար ո՛վ Տէր՝ ազգերուն
մէջը քեզ պիտի գովեմ, և քու ա-
նուանդ սաղմոս պիտի երգեմ ։
50 Բ Իր թագաւորին փրկութիւնները
մեծցընողը, ու իր օծեալին՝ Դաւի-
թին ու անոր սերունդին Գ յաւի-
տեան ողորմութիւն ընողը Անի է ։

տ Բ Օր. լբ. 13. Լդ. 29.
վ Սաղ. ճխդ. 1.
* Կամ՝ բազուկներովս պղնձէ աղեղ մը կը կոտրուի.
ր Առակ. դ. 12.
† Կամ՝ պարանոցը ինծի տուիր.
ց Յոբ. իէ. 9. լե. 12. Առակ. ա. 28. Ես. ա. 15. Երեմ. ժա. 11. ժդ. 12. Եզեկ. ը. 18. Միք. գ. 4. Զաք. է. 13.
ւ Զաք. ժ. 5.
փ Բ Թագ. բ. 9. 10. գ. 1.
ք Բ Թագ. ը.
օ Ես. ծբ. 15. ծե. 5.
ֆ Բ Օր. լգ. 29. Սաղ. կզ. 3. Ձա. 15.
‡ Եբր. ստեցին.
~ Միք. է. 17.
ք Սաղ. խէ. 3.
ֆ Սաղ. ծթ. 1.
Ա Հռով. ժե. 9.
Բ Սաղ. ճխդ. 10.
Գ Բ Թագ. է. 13.

## ՍԱՂՄ. ԺԹ

1 Ստեղծուածները Աստուծոյ փառքը կը ցուցը-
նեն. 7 իսկ անոր խօսքը իր շնորհքը կը
յայտնէ ։ 12 Դաւիթ շնորհք կը խնդրէ ։

Գլխաւոր երգեցողին. Սաղմոս Դաւթի ։

1 Երկինքը Աստուծոյ փառքը կը պատմէ, ու երկնից հաստատութիւնը անոր ձեռացը գործքերը կը ցուցընէ ։
2 Օրը օրին կը յայտնէ խօսքը, ու գիշերը գիշերին կը ցուցընէ գիտութիւնը ։
3 Չկայ զրոյց ու չկան խօսքեր. անոնց ձայնը չլսուիր.
4 Բայց ամէն երկիր ելաւ անոնց հնչիւնը, ու մինչեւ աշխարհի ծայրը՝ անոնց խօսքը ։ Անոնց մէջը արեւին համար վրան մը կանգնեց.
5 Ու *անիկայ իր առագաստէն ելած փեսայի պէս է. հզօր մարդու պէս իր ճամբան վազելով կ'ուրախանայ ։
6 Անոր ելքը երկնից ծայրէն է, ու անոր շրջանը մինչեւ անոնց ծայրերը. եւ անոր տաքութենէն բան մը չծածկուիր ։
7 Տէրոջը օրէնքը կատարեալ է. հոգին կը նորոգէ. Տէրոջը վկայութիւնը ճշմարիտ է. տգէտը իմաստուն կ'ընէ ։
8 Տէրոջը կանոնները շիտակ են. սիրտը կ'ուրախացընեն. Տէրոջը պատուիրանքները պայծառ են. աչքերուն լոյս կու տան ։
9 Տէրոջը վախը սուրբ է. յաւիտեան կը մնայ. Տէրոջը դատաստանները ճշմարիտ ու բոլորովին արդար են ։
10 Ցանկալի են անոնք ոսկիէն, ու շատ փորձուած ոսկիէն. մեղրէն անուշ են, ու խորիսխէ կաթած մեղրէն ։
11 Նաեւ քու ծառադ անոնցմով կը խրատուի, ու զանոնք պահելուն վարձքը շատ է ։
12 Ո՞վ կրնայ միտք առնել իր յանցանքները. ծածուկ մեղքերէն զիս մաքրէ.
13 Ամբարտաւան մեղքերէն ալ պահէ քու ծառադ. թող անոնք ինծի չտիրեն. այն ատենը անմեղ կ'ըլլամ, ու կը մաքրուիմ մեծ անօրէնութենէ ։
14 Բերնիս խօսքերը ու սրտիս խորհուրդը քու առջիդ ընդունելի ըլլան, ով Տէր՝ իմ վէմս ու փրկիչս ։

* Եբ՝ արեւը ։

ա Ծն. ա. 6 ։ Ես. խ. 22 ։ Հռովմ. ա. 19, 20 ։ բ Հռովմ. ժ. 18 ։ գ Ժող. ա. 5 ։ դ Սաղ. ճժա. 7 ։ ե Սաղ. ժբ. 6 ։ զ Սաղ. ժգ. 3 ։ է Սաղ. ճժթ. 72, 127 ։ Առակ. ը. 10, 11, 19 ։ ը Սաղ. ճժթ. 103 ։ թ Առակ. իթ. 18 ։ ժ Սաղ. խ. 12 ։ ի Սաղ. զ. 8 ։ Ղև. դ. 2 ։ լ Ծն. ի. 6 ։ ա Թագ. իե. 32, 33, 34, 39 ։ խ Սաղ. ճժթ. 133 ։ Հռովմ. զ. 12, 14 ։ ծ Սաղ. ծա. 15 ։ կ Ես. խդ. 14 ։ խգ. 6 ։ խէ. 4 ։ ա Թես. ա. 10 ։

## ՍԱՂՄ . Ի

1 Ժողովքը կ'օրհնէ թագաւորը ու անոր ամէն ձեռք զարնելու գործքերը ։ 7 Ժողովքին ունեցած յոյսը՝ Աստուծոյ օգնական ըլլալուն վրայ ։

Գլխաւոր երգեցողին. Սաղմոս Դաւթի ։

1 Նեղութեան օրը Տէրը պատասխանէ քեզի. Յակոբին Աստուծոյն անունը քեզ պաշտպանէ.
2 Օգնութիւն խրկէ քեզի սուրբ տեղէն, ու Սիօնէն զօրացընէ քեզ.
3 Քու ամէն ընծաներդ յիշէ, եւ քու ողջակէզներդ ընդունի. (Սէլա.)
4 Քու սրտիդ համեմատ քեզի տայ, եւ քու ամէն խորհուրդներդ կատարէ ։
5 Քու փրկութիւնովդ պիտի ուրախանանք. ու մեր Աստուծոյն անունովը դրօշակ վերցընենք ։ Տէրը կատարէ քու ամէն խնդրուածքներդ ։
6 Հիմա գիտցայ որ Տէրը կը պահէ իր օծեալը, անոր պատասխան կու տայ իր սուրբ երկինքէն, իր աջ ձեռքին փրկութեան ուժովը ։
7 Ոմանք կառքերու, եւ ոմանք ալ ձիերու կ'ապաւինին. բայց մենք մեր Տէր Աստուծոյն անունը պիտի յիշենք ։
8 Անոնք կորացան ու ինկան, բայց մենք ելանք ու շիտակ կայնեցանք ։
9 † Ով Տէր՝ փրկէ թագաւորը. պատասխան տուր մեզի՝ մեր կանչելու օրը" ։

ա Սաղ. ի. 1 ։ ա Առակ. ժը. 10 ։ բ Թագ. գ. 16 ։ բ Մն. ի. 8 ։ Սաղ. հգ. 17 ։ գ Սաղ. խա. 2 ։ դ Եւ. ժե. 15 ։ Սաղ. կ. 4 ։ ե Սաղ. բ. 2 ։ զ Սաղ. լգ. 16, 17 ։ Առակ. իա. 31 ։ Ես. լա. 1 ։ է բ Մն. լբ. 8 ։

† Կամ՝ Ով Տէր՝ փրկէ. թագաւորը մեզի պատասխան տայ մեր կանչելու օրը ։

## ՍԱՂՄ . ԻԱ

1 Յաղթութեան համար շնորհակալութիւն ։ 7 Ուրիշ յաղթութիւններու յոյս ։

Գլխաւոր երգեցողին. Սաղմոս Դաւթի ։

1 Ով Տէր՝ քու զօրութիւնովդ թագաւորը ուրախ պիտի ըլլայ, ու քու փրկութիւնովդ որչափ շատ պիտի ցնծայ ։
2 Անոր սրտին փափաքը իրեն տուիր. ու անոր շրթունքներուն խնդիրքը իրմէ չարգիլեցիր ։ (Սէլա ։)
3 Վասն զի բարութեան օրհնութիւններով անոր հասար. անոր գլուխը մաքուր ոսկիէ պսակ դրիր ։
4 Քեզմէ կեանք խնդրեց, ու անոր երկայն օրեր տուիր յաւիտեանս յաւիտենից ։
5 Անոր փառքը մեծ է քու փրկութիւնովդ. փառք ու վայելչութիւն դրիր անոր վրայ ։
6 Վասն զի օրհնութիւնները անոր վրայ հաստատեցիր յաւիտեան, ուրախութեամբ ուրախ ըրիր զանիկայ քու երեսիդ առջին ։
7 Ինչու որ թագաւորը Տէրոջը կը յուսայ, ու Բարձրելոյն ողորմութեամբը պիտի չսասանի ։
8 Քու ձեռքդ պիտի գտնէ քու ամէն թշնամիներդ. քու աջ ձեռքդ պիտի գտնէ քեզ ատողները ։
9 Զանոնք կրակի հնոցի պէս պիտի ընես քու բարկութեանդ ժամանակը. Տէրը իր բարկութիւնովը

ա Սաղ. ի. 5, 6 ։ բ Սաղ. ի. 4, 5 ։ գ բ Թագ. ժբ. 30 ։ ա Մն. ի. 2 ։ դ Սաղ. կա. 5, 6 ։ ե բ Թագ. է. 19 ։ Սաղ. ղա. 16 ։ զ Ծն. ժբ. 2 ։ Սաղ. հբ. 17 ։ է Սաղ. ժզ. 11 ։ խե. 7 ։ Գործ. բ. 28 ։ ը Սաղ. ժզ. 8 ։ թ Թագ. լա. 3 ։ ժ Մաղ. դ. 1 ։

բոլորովին պիտի կորսնցընէ զա-
նոնք, եւ կրակը պիտի ուտէ զա-
նոնք։
10 ևԱնոնց պտուղը երկրէն պիտի
կորսնցընես, ու անոնց սերունդը
մարդոց որդիներէն։
11 Ինչու որ քեզի դէմ չարութիւն
պատրաստեցին. էՆենգութեան
խորհուրդ ըրին, բայց կարող չե-
ղան կատարելու։
12 Վասն զի դուն անոնց կռնակը
դարձընել պիտի տաս. փախչելու
անոնց երեսին դէմ՝ լարերուդ վը-
րայ պիտի պատրաստես։
13 Ո՛վ Տէր՝ քու ուժովդ բարձր
եղիր. պիտի երգենք, ու սաղմոս
ըսենք քու զօրութեանդ։

## ՍԱՂՄ. ԻԲ

1 Դաւիթ իր սրտաբեկութեան ատենը կը գան-
գատի. 9 մեծ տագնապի մէջ ըլլալով աղօթք
կ'ընէ. 23 զԱստուած կը փառաւորէ։

Գլխաւոր երգեցողին, Այելեթ շա-
հարի վրայ. Սաղմոս Դաւթի։

1 ա Աստուած իմ՝ Աստուած իմ,
զիս ինչո՞ւ թողուցիր. զիս
փրկելէն, բ պոռալուս խօսքերէն
հեռու եղար։
2 Ո՛վ իմ Աստուածս՝ ցորեկը
կը կանչեմ, ու չես պատասխաներ.
և գիշերը [illegible], ու չեմ դադա-
րիր։
3 Բայց դուն սուրբ ես, ո՛վ գ Իս-
րայէլի գովաբանութեանց մէջ բը-
նակող։
4 Մեր հայրերը քեզի յուսացան.
յուսացան, ու փրկեցիր անոնք։
5 Քեզի աղաղակեցին, ու ազատե-
ցան. դ քեզի յուսացան ու չամչ-
ցան։
6 Բայց ես ե որդ եմ, ու մարդ չեմ.
զ մարդոց մէջը քամահրուած, ու
ժողովուրդոց մէջը անարգուած։
7 է Ամէն զիս տեսնողները զիս ծա-
ղըր կ'ընեն. շրթունք կը բանան,
ը գլուխ կ'երերցընեն,
8 Ըսելով. թ Տէրոջը յուսացաւ,
թող փրկէ անիկայ. ժ թող
ազատէ զանիկայ, ինչու որ անոր
հաւնեցաւ։
9 ի Բայց զիս մօրս արգանդէն հանո-
ղը դուն ես. մօրս ծիծը եղած ա-
տենս՝ դուն ինծի յոյս տուիր։
10 Արգանդէն ես քեզի յանձնուե-
ցայ. լ իմ մօրս որովայնէն դուն
ես իմ Աստուածս։
11 Մի՛ հեռանար ինծմէ, վասն զի
նեղութիւնը մօտ է. վասն զի օգ-
նող մը չկայ։
12 խ Շատ զուարակներ չորս կողմս
առին. Բասանի ցուլերը զիս պա-
շարեցին.
13 ծ Իրենց բերանը իմ վրաս բացին,
յափշտակող ու մռնչող առիւծի
պէս։
14 Ջուրի պէս թափուեցայ, կ ու
ամէն ոսկորներս բաժնուեցան. հ սիր-
տըս մոմի պէս եղաւ. հալեցաւ փո-
րիս մէջը։
15 ձ Չորցաւ իմ ոյժս՝ հողէ ամա-
նի մը պէս, ու ղ լեզուս քիմքիս փա-
կաւ. և զիս մահուան հողը դրիր։
16 ճ Վասն զի շուները չորս կողմս
առին, չարերուն ժողովքը զիս պա-
տեցին, մ ձեռքերս ու ոտքերս ծա-
կեցին։
17 Իմ ամէն ոսկորներս կրնամ համ-
րել. յ անոնք կը նային, կը տես-
նեն զիս։
18 ն Իմ հանդերձներս իրենց մէջը կը
բաժնեն. ու պատմուճանիս վրայ
վիճակ կը ձգեն։
19 Բայց շ դուն ո՛վ Տէր՝ մի հեռա-
նար ինծմէ. ո՛վ իմ զօրութիւնս՝
շուտով ինծի օգնութեան հասիր.
20 Իմ անձս սուրէն ազատէ՛, ու
ո * կեանքս շանը ձեռքէն։
21 չ Փրկէ՛ զիս առիւծին բերնէն, ու
ինծի պատասխան տուր պ † միեղջե-
րուներուն եղջիւրներէն։
22 ջ Քու անունդ ռ եղբայրներուս
պիտի պատմեմ. ժողովքին մէջ
քեզ պիտի գովեմ։
23 ս Ո՛վ Տէրոջմէ վախցողներ՝ գովե-
ցէ՛ք զանիկայ. ո՛վ Յակոբին բոլոր
զաւակները՝ փառաւորեցէ՛ք անի-
կայ, ու վախցէ՛ք անկէ՝ Իսրայէլին
բոլոր զաւակները։
24 Վասն զի չանարգեց ու չքամահ-
րեց տառապեալին ‡ տառապանքը,
ու երեսը անկէ չդարձուց. հապա
վ իրեն կանչած ատենը լսեց։
25 տ Քեզմով պիտի ըլլայ իմ գովու-
թիւնս մեծ ժողովքին մէջը. ր իմ
ուխտերս անկէ վախցողներուն առ-
ջին պիտի կատարեմ։
26 ց Տնանկները պիտի ուտեն ու
կշտանան. Տէրը պիտի գովեն՝ զա-
նիկայ փնտռողները. ձեր սիրտը
յաւիտեան պիտի ապրի։
27 Պիտի յիշեն ւ ու Տէրոջը դառ-
նան երկրի ամէն ծայրերը, փ ու քու
առջիդ երկրպագութիւն պիտի ը-
նեն ազգերուն ամէն տոհմերը։
28 ք Վասն զի թագաւորութիւնը
Տէրոջն է, ու ան կը տիրէ ազգե-
րուն վրայ։
29 օ Երկրի ամէն պարարտները պի-
տի ուտեն ու երկրպագութիւն պի-
տի ընեն. ֆ ամէն հողը իջնողները
ծունկ պիտի չոքեն անոր առջին,
ու ան [illegible] իր անձը չապրեցըներ։
30 Զաւակը պիտի ծառայէ անոր.
Տէրոջը վրայով պիտի պատմուի
[illegible] դարուն մէջ։
31 Պիտի գան ու անոր արդարու-

ե Սաղ. ժը. 8. Եսա. իզ. 11.
ւ գ Թագ. ժդ. 34. Յոբ. ժը. 16, 17, 19. Սաղ. լէ. 28. ճլթ. 13. Եսա. ժդ. 20.
է Սաղ. բ. 1.
ա Մատ. իէ. 46. Մար. ժե. 34.
բ Եբր. ե. 7.
գ բ Օր. ժ. 21.
դ Սաղ. իե. 2, 3. լա. 1. հա. 1. Եսա. խթ. 23. Հռով. թ. 33.
ե Յոբ. իե. 6. Եսա. խա. 14.
զ Եսա. ծգ. 3.
է Մատ. իէ. 39. Մար. ժե. 29. Ղու. իգ. 35.
ը Յոբ. ժզ. 4. Սաղ. ճթ. 25.
թ Մատ. իէ. 43.
ժ Սաղ. ղա. 14.
ի Սաղ. հա. 6.
լ Եսա. խզ. 3. խթ. 1.
խ Սաղ. կը. 30. Եզեկ. լթ. 18. Ամով. դ. 1.
ծ Յոբ. ժզ. 10. Սաղ. լե. 21. Ողբ. բ. 16. գ. 46.
կ Դան. ե. 6.
հ Յեսու. է. 5. Յոբ. իգ. 16.
ձ Առակ. ժէ. 22.
ղ Յոբ. իթ. 10. Ողբ. դ. 4. Յովհ. ժթ. 28.
ճ Յայտ. իբ. 15.
մ Մատ. իէ. 35. Մար. ժե. 24. Ղու. իգ. 33. Յովհ. ժթ. 23, 37. ի. 25.
յ Ղու. իգ. 35.
ն Ղու. իգ. 34. Յովհ. ժթ. 23, 24.
շ Հմր 11.
ո Սաղ. ժ. 1.
* Եբր. միամօրութիւնս
չ Հմր 16.
պ Բ Տիմ. դ. 17.
† Կամ՝ վայրի ցուլերուն
ջ Եբր. բ. 12.
ռ Սաղ. ի. 9.
ս Յովհ. ի. 17. Հռով. ը. 29.
‡ Կամ՝ աղաղակը.
վ Եբր. ե. 7.
տ Սաղ. լե. 18. խ. 9, 10. ճժա. 1.
ր Սաղ. կզ. 13. ճժզ. 14. Ժող. ե. 4.
ց Եսա. կե. 13.
+ Յովհ. զ. 51, 52.
ւ Սաղ. բ. 8. հբ. 11. ձզ. 9. ղը. 3. Եսա. խթ. 6.
փ Սաղ. ղզ. 7.
ք Սաղ. խէ. 8. Աբդ. 21. Զաք. ժդ. 9. Մատ. զ. 13.
օ Սաղ. խե. 12.
ֆ Եսա. իզ. 19. Փիլ. բ. 10.
Սաղ. հբ. 6. ձզ. 9. ճբ. 18. Եսա. կ. 3. Տես Հռով. դ. 21, 22.

թիւնը պիտի պատմեն անոր ժողովուրդին, որ պիտի ծնանի. վասն զի նա բանը ըրաւ կատարեց։

## ՍԱՂՄ. ԻԳ

1—6 Դաւիթին վստահութիւնը Աստուծոյ շնորհացը վրայ։

Սաղմոս Դաւթի։

1 Տէրը իմ հովիւս է. բնաւ բանի մը կարօտութիւն պիտի չունենամ.
2 Զիս խոտաւէտ արօտներու մէջ կը պառկեցնէ. հանդարտ ջուրերուն քովը ինծի կ'առաջնորդէ։
3 Հոգիս կը նորոգէ. իր անուանը համար՝ արդարութեան ճամբաներուն մէջը կ'առաջնորդէ ինծի։
4 Թէև մահուան շուքի ձորին մէջն ալ պտըտիմ, չարէն պիտի չվախնամ. վասն զի դուն իմ հետս ես. քու ցուպդ ու գաւազանդ՝ անոնք իս պիտի մխիթարեն։
5 Սեղան կը պատրաստես իմ առջևս, իմ թշնամիներուս դիմացը. իմ գլուխս իւղով կ'օծես. իմ բաժակս խիստ լեցուն է։
6 Միրաւի բարերարութիւնը ու ողորմութիւնը իմ հետս պիտի գան կենացս բոլոր օրերուն մէջը, ու շատ օրեր Տէրոջը տունը պիտի բնակիմ։

## ՍԱՂՄ. ԻԴ

1 Աստուծոյ տէրութիւնը երկրիս վրայ։ 3 Անոր հոգևոր թագաւորութեանը հպատակները։ 7 Զանիկայ ընդունելու յորդորանք մը։

Սաղմոս Դաւթի։

1 Տէրոջն է երկիրը, ու անոր լիութիւնը, աշխարհքը, ու անոր բնակիչները։
2 Ինչու որ ինքը անոր հիմերը ծովերուն վրայ ձգեց, ու զանիկայ գետերուն վրայ հաստատեց։
3 Ո՞վ պիտի ելլէ Տէրոջը լեռը. կամ ո՞վ պիտի կենայ անոր սուրբ տեղը։
4 Ձեռքերով սուրբը, ու սրտով մաքուրը, որ ստութեան անձնատուր չեղաւ, ու նենգութեամբ երդում չըրաւ.
5 Անիկայ Տէրոջմէն օրհնութիւն պիտի ստանայ, ու իր փրկութեանը Աստուծմէն՝ արդարութիւն։
6 Զանիկայ փնտռողներուն ցեղը աս է. քու երեսդ խնդրողները *Յակոբն է"։ (Սէլայ։)
7 Ո՛վ դռներ՝ գլուխնիդ վեր վերցուցէք. ու վերցուեցէ՛ք՝ ո՛վ յաւիտենական դռներ, որ փառաց Թագաւորը մտնէ։
8 Ո՞վ է աս փառաց Թագաւորը. կարող ու հզօր Տէրը, պատերազմի մէջ հզօր Տէրը։
9 Ո՛վ դռներ՝ գլուխնիդ վեր վերցուցէք. ու վերցուեցէ՛ք՝ ո՛վ յաւիտենական դռներ, որ փառաց Թագաւորը մտնէ՛։
10 Ո՞վ է աս փառաց Թագաւորը. զօրքերուն Տէրը, ինքն է փառաց Թագաւորը։ (Սէլայ։)

## ՍԱՂՄ. ԻԵ

1 Դաւիթին վստահութիւնը աղօթքի մէջ։ 7 Մեղքերու թողութեան համար, 16 ու նեղութենէ ազատուելու համար աղօթք կ'ընէ։

Սաղմոս Դաւթի։

1 Ո՛վ Տէր՝ իմ անձս քեզի վերցուցի։
2 Ո՛վ իմ Աստուածս՝ քեզի յուսացայ. թող չամչնամ, ու թշնամիներս իմ վրաս չցնծան։
3 Նաև ամէն քեզի սպասողները թող չամչնան. ունայնութեամբ անօրէնութիւն ընողները թող ամչնան։
4 Ո՛վ Տէր՝ քու ճամբաներդ ցուցո՛ւր ինծի. քու շաւիղներդ սորվեցո՛ւր ինծի։
5 Քու ճշմարտութեանդ մէջ ինծի առաջնորդէ, ու սորվեցո՛ւր ինծի. քանզի դո՛ւն ես իմ փրկութեանս Աստուածը. ես քեզի կը սպասեմ ամէն օր։
6 Ո՛վ Տէր՝ քու գթութիւններդ ու ողորմութիւններդ յիշէ՛. ինչու որ յաւիտենական են։
7 Մանկութեան մեղքերս ու յանցանքներս մի՛ յիշեր. հապա քու ողորմութիւնովդ իս յիշէ, քու բարութեանդ համար՝ ով Տէր։
8 Տէրը բարի և ուղիղ է. անոր համար մեղաւորներուն կը սորվեցնէ ճամբան։
9 Դատաստանի մէջ պիտի առաջնորդէ հեզերուն, ու իր ճամբան հեզերուն պիտի սորվեցնէ։
10 Տէրոջը բոլոր ճամբաները ողորմութիւն ու ճշմարտութիւն են իր ուխտը ու վկայութիւնները պահողներուն։
11 Ո՛վ Տէր՝ քու անուանդ համար ներէ իմ անօրէնութիւնս, վասն զի մեծ է։
12 Ո՞վ է ան մարդը՝ որ Տէրոջմէն կը վախնայ. անոր պիտի սորվեցնէ իր ընտրած ճամբան։
13 Անոր անձը բարութեան մէջ պիտի բնակի, ու անոր սերունդը երկիրը պիտի ժառանգէ։
14 Տէրոջը ընտանութիւնը իրմէ վախցողներուն հետն է. ու իր ուխտը անոնց կը սորվեցնէ։
15 Իմ աչքերս ամէն ատեն Տէրոջը կը նային. ինչու որ իմ ոտքերս որոգայթէն ան պիտի հանէ։

ի Սաղ. կթ. 16 : ձզ. 16 :
լ Բ Թագ. ժզ. 12 :
խ Հմր 2 :
ծ Սաղ. ճլ. 8 :

16 [ի]Ինծի դարձիր, ու ողորմէ՛ ինծի, վասն զի մինակ ու վշտացած եմ ։
17 Սրտիս նեղութիւնները շատցան. իմ վիշտերէս զիս հանէ ։
18 [լ]Իմ նեղութեանս ու տառապանքիս նայէ, ու բոլոր մեղքերս ներէ ։
19 Տես իմ թշնամիներս, ինչու որ շատցան, ու անիրաւ ատելութիւնով զիս ատեցին ։
20 Պահէ՛ իմ անձս, ու փրկէ՛ զիս. [խ]Թող չամչնամ, վասն զի քեզի յուսացայ ։
21 Կատարելութիւնը և ուղղութիւնը զիս թող պահեն, ինչու որ քեզի սպասեցի ։
22 Ո՛վ Աստուած՝ [ծ]փրկէ Իսրայէլը իր ամէն նեղութիւններէն ։

## ՍԱՂՄ. ԻԶ

1—12 Դաւիթ Աստուծոյ կը դիմէ իր անարատութեանը վրայ վստահանալով ։

Սաղմոս Դաւթի ։

ա Սաղ. է. 8 :
բ Հմր 11 : Դ Թագ. ի. 3 : Առակ. ի. 7 :
գ Սաղ. իբ. 7 : լա. 14 : Առակ. իթ. 25 :
դ Սաղ. ժէ. 9 : ժէ. 3 : կզ. 10 : ճլթ. 23 : Զաք. ժգ. 9 :
ե Դ Թագ. ի. 3 :
զ Սաղ. ա. 1 : Երեմ. ժե. 17 :
է Սաղ. լա. 6 : ճլթ. 21, 22 :
ը Սաղ. ա. 1 :
թ Տես Ել. լ. 19, 20 : Սաղ. հգ. 13 : Ա Տիմ. բ. 8 :
ժ Սաղ. իէ. 4 :
ի Տես Ա Թագ. իե. 29 : Սաղ. կբ. 3 :
լ Ել. իգ. 8 : Բ Օր. ժզ. 19 : Ա Թագ. ը. 3 : Ես. լգ. 15 :
խ Հմր 1 :
ծ Սաղ. խ. 2 :
կ Սաղ. իե. 11 :
հ Սաղ. իբ. 22 : ձէ. 32 : ճժա. 1 :

1 Ո՛վ Տէր՝ [ա]իս դատէ, վասն զի [բ]իմ անարատութիւնովս քալեցի. [գ]Տէրոջը յուսացայ, պիտի չսասանիմ ։
2 Ո՛վ Տէր՝ [դ]զիս փորձէ ու քննէ. փորձէ իմ երիկամունքներս ու սիրտս.
3 Վասն զի քու ողորմութիւնդ իմ աչքերուս առջին է, ու [ե]քու ճշմարտութեանդ մէջը քալեցի ։
4 [զ]Ունայն մարդիկներուն հետը չնստայ, ու կեղծաւորներուն հետը պիտի չխառնուիմ ։
5 [է]Չարերուն ժողովքը ատեցի, [ը]ու ամբարիշտներուն հետը պիտի չնստիմ ։
6 [թ]Անմեղութիւնով ձեռքերս պիտի լուամ, և քու սեղանիդ չորս կողմը պիտի պտըտիմ՝ ով Տէր,
7 Որ շնորհակալութեան ձայնը լսել տամ, ու քու ամէն սքանչելիքներդ պատմեմ ։
8 Ով Տէր՝ [ժ]սիրեցի քու տանդ բնակութիւնը, և քու փառքիդ կեցած տեղը ։
9 [ի]Մի՛ կորսնցըներ իմ անձս մեղաւորներուն հետ, ու իմ կեանքս՝ արիւնահեղ մարդիկներուն հետ,
10 Որ անոնց ձեռքերուն մէջը անօրէնութիւն կայ, ու անոնց աջ ձեռքը [լ]կաշառքով լեցուն է ։
11 Բայց ես [խ]իմ անարատութիւնովս պիտի քալեմ, զիս փրկէ, ու ինծի ողորմէ ։
12 [ծ]Իմ ոտքս [կ]ուղղութեան մէջ կը կենայ. [հ]ժողովքներուն մէջ Տէրը պիտի օրհնեմ ։

## ՍԱՂՄ. ԻԷ

1 Դաւիթ Աստուծոյ կարողութեամբը, 4 և Աստուծոյ ծառայութեանը համար իր ունեցած սիրովը, 9 ու աղօթքով իր հաւատքը կը պահպանէ ։

Սաղմոս Դաւթի ։

1 Տէրը [ա]իմ լոյսս՝ ու [բ]իմ փրկութիւնս է, ես ո՛ւսկից պիտի վախնամ. [գ]Տէրը իմ կեանքիս ապաւէնն է, ես ո՛ւսկից պիտի դողամ ։
2 Չարերը [դ]իմ մարմինս ուտելու համար ինծի մօտեցած ատեննին՝ իմ նեղիչներս, ու թշնամիներս սահեցան ու ինկան ։
3 [ե]Եթէ որ վրաս զօրքի բանակ ելլէ, սիրտս պիտի չվախնայ. թէ որ վրաս պատերազմի պատրաստութիւն ըլլայ, անով [զ]ու ես վստահ պիտի ըլլամ ։
4 [զ]Բան մը կը խնդրեմ Տէրոջմէն, զան ալ կ'աղաչեմ, որ կեանքիս բոլոր օրերը [է]Տէրոջը տանը մէջ բնակիմ, [ը]Տէրոջը վայելչութիւնը տեսնելու, ու անոր տաճարին մէջ զինք խնդրելու համար ։
5 Վասն զի չար օրուան մէջ՝ իր բնակարանին մէջը [թ]զիս պիտի պահէ, իր վրանին ծածկոյթովը զիս պիտի ծածկէ. [ժ]վէմի վրայ պիտի վերցընէ զիս ։
6 Ու հիմա [ի]իմ գլուխս պիտի բարձրանայ իմ բոլորտիքս եղող թշնամիներուս վրայ. ու անոր վրանին մէջը ուրախութեան ձայնով զոհեր պիտի մատուցանեմ. պիտի երգեմ, ու սաղմոս պիտի ըսեմ Տէրոջը ։
7 Ո՛վ Տէր՝ ձայնս լսէ կանչելու ատենս, ու ողորմէ և պատասխան տուր ինծի ։
8 [լ]Իմ երեսս փնտռեցէ՛ք՝ ըսեր ես, իմ սիրտս քեզի ըսաւ. Քու երեսդ պիտի փնտռեմ՝ ով Տէր ։
9 [խ]Քու երեսդ ինծմէ մի՛ ծածկեր. բարկութիւնով ծառադ մէկդի մի՛ ձգեր. ինծի օգնական եղար, զիս մի մերժեր, և զիս մի՛ թողուր՝ ով իմ փրկութեանս Աստուածը ։
10 [ծ]Թէև հայրս ու մայրս զիս թողուն, բայց Տէրը իս պիտի ընդունի ։
11 Ով Տէր՝ [կ]քու ճամբադ ինծի սորվեցուր, ու [հ]շիտակ ճամբուն մէջը ինծի առաջնորդէ թշնամիներուս համար ։
12 Զիս իմ [ձ]թշնամիներուս կամացը մի մատներ, ինչու որ [ղ]իմ վրաս սուտ վկաներ, ու անիրաւութիւն փչողներ ելան ։
13 Հաւատացի Տէրոջը բարութիւնը տեսնելու [ճ]կենդանիներուն երկրին մէջ ։
14 [մ]Տէրոջը սպասէ. զօրացիր, ու սիրտդ թող զօրանայ. ալ Տէրոջը սպասէ ։

ա Սաղ. ձդ. 11 : Ես. կ. 19, 20 : Միք. է. 8 :
բ Ել. ժե. 2 :
գ Սաղ. կբ. 2, 6 : ճժը. 14, 21 : Ես. ժբ. 2 :
դ Սաղ. ժդ. 4 :
ե Սաղ. գ. 6 :
զ Սաղ. իզ. 8 :
է Սաղ. կե. 4 : Ղուկ. բ. 37 :
ը Սաղ. ղ. 17 :
թ Սաղ. լա. 20 : Ձգ. 3 : ղա. 1 : Ես. դ. 6 :
ժ Սաղ. խ. 2 :
ի Սաղ. գ. 3 :
լ Սաղ. իդ. 6 : ճե. 4 :
խ Սաղ. կթ. 17 : ճխգ. 7 :
ծ Ես. խթ. 15 :
կ Սաղ. իե. 4 : ձզ. 11 : ճժթ. :
հ Սաղ. իզ. 12 :
ձ Սաղ. լե. 25 :
ղ Ա Թագ. իբ. 9 : Բ Թագ. ժզ. 7, 8 : Սաղ. լե. 11 :
ճ Սաղ. ձզ. 13 : ճժզ. 9 : ճխբ. 5 : Երեմ. ժա. 19 : Եզեկ. իզ. 20 :
մ Սաղ. լա. 24 : կբ. 1, 5 : ճլ. 5 : Ես. իե. 9 : Ամբ. բ. 3 :

## ՍԱՂՄ . ԻԸ

1 Դաւիթ ջերմեռանդութեամբ աղօթք կ'ընէ իր թշնամիներուն դէմ . 6 զԱստուած կ'օրհնէ . 9 ժողովուրդին համար աղօթք կ'ընէ ։

Սաղմոս Դաւթի ։

1 Ո՛վ Տէր՝ քեզի՛ կը կանչեմ . ո՛վ իմ վէմս՝ մի՛ լռեր ինծի . չըլլայ որ ինծի լռելովդ գերեզմանը իջնողներուն նմանիմ ։

2 Լսէ՛ իմ խնդրուածքիս ձայնը՝ երբոր քեզի կ'աղաչեմ . երբոր իմ ձեռքերս կը վերցընեմ դէպ 'ի քու սուրբ դաբիրդ ։

3 Զիս մի՛ կորսընցըներ ամբարիշտներուն հետ, ու անօրէնութիւն գործողներուն հետ, որոնք իրենց ընկերներուն հետ խաղաղութիւն կը խօսին, բայց սրտերնուն մէջը չարութիւն կայ ։

4 Տո՛ւր անոնց իրենց գործքերուն պէս, ու իրենց ըրածներուն չարութեանը պէս . իրենց ձեռացը գործքերուն պէս տո՛ւր անոնց, հատուցո՛ւմ ըրէ անոնց ։

5 Որովհետև անոնք Տէրոջը ըրածներուն ու անոր ձեռացը գործքերուն չեն նայիր . պիտի կործանէ զանոնք ու ալ պիտի չշինէ ։

6 Օրհնեալ ըլլայ Տէրը, որ լսեց իմ աղօթքիս ձայնը ։

7 Տէրը իմ զօրութիւնս ու իմ ասպարս է . իմ սիրտս անոր յուսաց, ու ես օգնութիւն գտայ . ուստի սիրտս ուրախացաւ, և ես իմ երգովս զանիկայ պիտի գովեմ ։

8 Տէրը անոնց ոյժն է, ու իր օծեալին փրկութեանը պարիսպն է ։

9 Փրկէ քու ժողովուրդդ, ու օրհնէ քու ժառանգութիւնդ . նաև հովուէ զանոնք . ու յաւիտեան բարձրացուր ։

ա Սաղ. ձգ. 1 ։ բ Սաղ. ձր. 4 ։ ճխգ. 7 ։ գ Եբր. Գուբը դ Գ Թագ. ը. 28, 29 ։ ե Դ Թագ. դ. 22, 23 ։ Սաղ. ե. 7 ։ ճլը. 2 ։ զ Սաղ. իզ. 9 ։ է Եբր. քաշեր ը Սաղ. ժր. 2 ։ ծե. 21 ։ Կբ. 4 ։ Երեմ. լթ. 8 ։ թ Բ Տիմ. դ. 14 ։ Յայտ. ժը. 6 ։ ժ Յոբ. լդ. 27 ։ Ես. ե. 12 ։ ի Սաղ. ժը. 2 ։ լ Սաղ. ժգ. 5 ։ իբ. 4 ։ խ Սաղ. ի. 6 ։ ծ Բ Օր. թ. 29 ։ Գ Թագ. ը. 51, 53 ։

## ՍԱՂՄ ԻԹ

1 Աստուծոյ փառաբանութիւն կը վայլէ 3 իր կարողութեանը համար, 11 ու իր ժողովուրդը պաշտպանելուն համար ։

Սաղմոս Դաւթի ։

1 Տէրոջը տուէ՛ք ո՛վ հզօրաց որդիքը, Տէրոջը տուէք փառք ու զօրութիւն ։

2 Տէրոջը տուէք իր անուանը փառքը, Տէրոջը երկրպագութիւն ըրէք սրբութեան զարդարանքով ։

3 Տէրոջը ձայնը ջուրերուն վրայ է . փառաց Աստուածը կ'որոտայ . Տէրը շատ ջուրերուն վրայ է ։

4 Տէրոջը ձայնը ուժով է Տէրոջը ձայնը վեհափառութիւնով է ։

5 Տէրոջը ձայնը եղևինները կը կոտրէ, ու Տէրը կը կոտրտէ Լիբանանի եղևինները .

6 Զանոնք կը ցաթկեցընէ որթուի պէս, Լիբանանը ու Սարիոնը միեղջերուներուն ձագին պէս ։

7 Տէրոջը ձայնը կրակին բոցերը կը ճեղքէ ։

8 Տէրոջը ձայնը կը դողացընէ անապատը . Տէրը Կադէսի անապատը կը դողացընէ ։

9 Տէրոջը ձայնը եղնիկները կը ծընեցընէ, ու անտառները կը մերկացընէ . անոր տաճարին մէջը ամէնքն ալ կը խօսին անոր փառքը ։

10 Տէրը ջրհեղեղին վրայ կը նստի . Տէրը յաւիտեան թագաւոր կը նստի ։

11 Տէրը իր ժողովուրդին զօրութիւն պիտի տայ . Տէրը իր ժողովուրդը խաղաղութիւնով պիտի օրհնէ ։

ա Ա Մն. ժզ. 28, 29 ։ Սաղ. ղղ. 7, 8, 9 ։ բ Կամ՝ Աստուծոյ գ Յոբ. լէ. 4, 5 ։ դ Ես. բ. 13 ։ ե Սաղ. ճժգ. 4 ։ զ Բ Օր. գ. 9 ։ է Թու. ժգ. 27 ։ ը Յոբ. լթ. 1, 2, 3 ։ թ Ծն. զ. 17 ։ Յոբ. լը. 8, 25 ։ ժ Սաղ. ժ. 16 ։ ի Սաղ. իը. 8 ։

## ՍԱՂՄ . Լ

1 Դաւիթ իր փրկութեանը համար՝ զԱստուած կը գովաբանէ, 4 կը յորդորէ ուրիշներն ալ որ զանիկայ գովաբանեն ; յիշեցընելով անոնց՝ թէ Աստուած ինչպէս վարուեցաւ իրեն հետ ։

Սաղմոս Դաւթի . տանը նաւակատեաց երգը .

1 Ո՛վ Տէր՝ կը բարձրացընեմ քեզ, վասն զի իս ազատեցիր, ու թշնամիներս իմ վրաս չուրախացուցիր ։

2 Ո՛վ իմ Տէր Աստուածս՝ քե՛զի կանչեցի, ու իս բժշկեցիր ։

3 Ո՛վ Տէր՝ իմ անձս գերեզմանէն հանեցիր, գուբը իջնողներուն մէջէն իս ապրեցուցիր ։

4 Սաղմո՛ս երգեցէք Տէրոջը՝ ո՛վ անոր սուրբերը, ու անոր սրբութիւնը յիշելով շնորհակալ եղէք ։

5 Վասն զի մէկ րոպէ մը իր բարկութեանը մէջն է . բայց իր հաճութեանը մէջն է մեր բոլոր կենացը ատենը . իրիկունը լաց կայ, բայց առտուն ուրախութիւն ։

6 Ես իմ յաջողութեանս մէջ ըսի թէ՝ յաւիտեան պիտի չսասանիմ ։

7 Ո՛վ Տէր քու հաճութեամբդ իմ լեռս հաստատուն ըրիր . երեսդ ծածկեցիր, ու ես խռովեցայ ։

8 Ո՛վ Տէր՝ քեզի կը կանչեմ, ու Տէրոջը աղաչանք կ'ընեմ ։

9 Իմ արիւնէս ի՞նչ օգուտ կ'ըլլայ, թէ որ ես գուբը իջնեմ . միթէ հողը քեզ պիտի գովէ՞, կամ անիկայ պիտի պատմէ՞ քու ճշմարտութիւնդ ։

10 Լսէ ո՛վ Տէր՝ ու ողորմէ՛ ինծի . ո՛վ Տէր՝ ինծի օգնական եղիր ։

11 Իմ սուգս պարի փոխեցիր, քուրձս ինծմէ հանեցիր և ինծի ուրախութիւն հագցուցիր .

12 Որպէս զի իմ փառքս սաղմոս երգէ քեզի, ու ալ չլռէ ո՛վ իմ

ա Բ Օր. ի. 5 ։ Բ Թագ. ե. 11 ։ զ. 20 ։ բ Սաղ. իե. 2 ։ լե. 19, 24 ։ գ Սաղ. զ. 2 ։ ճգ. 3 ։ դ Սաղ. ձզ. 13 ։ ե Սաղ. իը. 1 ։ զ Ա Մն. ժզ. 4 ։ Սաղ. ղէ. 12 ։ է Սաղ. ձգ. 9 ։ Ես. իզ. 20 ։ ծդ. 7, 8 ։ Բ Կոր. դ. 17 ։ ը Սաղ. կգ. 3 ։ թ Սաղ. ճիզ. 5 ։ ժ Յոբ. իթ. 18 ։ ի Սաղ. ճգ. 29 ։ լ Սաղ. զ. 5 ։ ձր. 11 ։ ճժե. 17 ։ ճժը. 17 ։ Ես. լը. 18 ։ խ Բ Թագ. զ. 14 ։ Ես. կա. 3 ։ Երեմ. լա. 4 ։ ծ Սաղ. ծէ. 8 ։

Տէր Աստուածս՝ յաւիտեան քեզ պիտի գովեմ ։

## ՍԱՂՄ . ԼԱ

1 Դաւիթ Աստուծոյ վրայ իր ունեցած վստահութիւնը ցուցընելով՝ անկէ օգնութիւն կը խնդրէ ։ 7 Անոր ողորմութիւններովը կ'ուրախանայ ։ 9 Իր նեղութեանը մէջ կ'աղօթէ ։ 19 Աստուծոյ բարութիւնները յիշելով՝ զանիկայ կ'օրհնէ ։

Գլխաւոր երգեցողին . Սաղմոս Դաւիթի ։

1 Ով Տէր՝ [ա]քեզի յուսացայ . յաւիտեան չամչնամ . [բ]Քու արդարութեամբդ զիս ազատէ ։
2 Քու [գ]ականջդ ինծի խոնարհեցուր . շուտով զիս ազատէ . ինծի ամրութեան վէմ մը եղիր , ու զիս փրկելու համար ապաստանի տուն մը .
3 [դ]Վասն զի իմ վէմս ու բերդս դուն ես . և [ե]քու անուանդ համար ինծի առաջնորդէ ու զիս կառավարէ ։
4 Որոգայթէն զիս հանէ , որ ինծի համար գաղտուկ լարեր են , ինչու որ իմ զօրութիւնս դուն ես ։
5 [զ]Իմ հոգիս քու ձեռքդ կը յանձնեմ . ով Եհովայ՝ Աստուած ճշմարտութեան՝ դուն իս փրկեցիր ։
6 [է]Սնոտի ունայնութիւններ պահողները ատեցի . բայց ես Տէրոջը յուսացայ ։
7 Քու ողորմութիւնովդ պիտի ցնծամ և ուրախ ըլլամ . ինչու որ իմ թշուառութիւնս տեսար , ու [ը]իմ անձս տառապանքներուն մէջ գիտցար .
8 Եւ զիս [թ]թշնամիին ձեռքը չըմատնեցիր , հապա [ժ]իմ ոտքերս լայնարձակ տեղ մը կանգնեցուցիր ։
9 Ով Տէր՝ ողորմէ ինծի , վասն զի նեղութեան մէջ եմ . սրտնեղութենէն [ի]մաշեցաւ իմ աչքս , իմ անձս ու իմ փորս ։
10 Վասն զի իմ կեանքս տրտմութենէն՝ ու տարիներս հառաչանք ընելէն սպառեցան . իմ ոյժս թշուառութենէս տկարացաւ . [լ]ոսկորներս ալ մաշեցան ։
11 Իմ բոլոր թշնամիներուս՝ [խ]մանաւանդ դրացիներուս առջեւ [ծ]նախատինք եղայ . ու իմ ծանօթներուս երկիւղ եղայ . [կ]զիս դուրսը տեսնողները ինծմէ կը փախչէին ։
12 [հ]Մեռածի պէս սիրտէ մոռցուած եղայ , կորսուած ամանի նմանեցայ ։
13 [ձ]Վասն զի շատերուն բամբասանքը լսեցի . [ղ]չորս կողմս վախ կար . երբոր անոնք [ճ]ինծի համար մէկտեղ ժողվուեցան , խորհուրդ կ'ընէին որ հոգիս առնեն ։
14 Բայց ես քեզի յուսացայ՝ ով

ա Սաղ. իբ. 5 ; իե. 2 ; հա. 1 ; Ես. խթ. 23 ։
բ Սաղ. ճխգ. 1 ։
գ Սաղ. հա. 2 ։
դ Սաղ. ժը. 1. 2 ։
ե Սաղ. իդ. 3 ; իե. 11 ։
զ Ղուկ. իգ. 46 ; Գործ. է. 59 ։
է Յովն. բ. 8 ։
ը Յովհ. ժ. 27 ։
թ Բ Օր. լբ. 30 ; ա Թագ. ժէ. 46 ; իգ. 19 ։
ժ Սաղ. դ. 1 ; ժը. 19 ։
ի Սաղ. զ. 7 ։
լ Սաղ. լբ. 3 ; ճբ. 3 ։
խ Յոբ. ժթ. 13 ; Սաղ. լը. 11 ; ձը. 8, 18 ։
ծ Սաղ. խա. 8 ; Ես. ծգ. 4 ։
կ Սաղ. կդ. 8 ։
հ Սաղ. ձը. 4. 5 ։
ձ Երեմ. ի. 10 ։
ղ Երեմ. զ. 25 ; ի. 3 ; Ողբ. բ. 22 ։
ճ Մատ. իէ. 1 ։

Տէր . ըսի թէ՝ Դուն ես իմ Աստուածս .
15 Իմ ժամանակներս քու ձեռքդ են . փրկէ զիս թշնամիներուս ձեռքէն՝ ու զիս հալածողներէն ։
16 [մ]Քու ծառայիդ վրայ երեսդ փայլեցուր . քու ողորմութեամբդ զիս փրկէ ։
17 Ով Տէր՝ [յ]չամչնամ , վասն զի քեզի կանչեցի . ամբարիշտները թող ամչնան , [ն]ու գերեզմանին մէջը թող լուռ կենան ։
18 [շ]Թող պապանձին նենգաւոր շրթունքները , որոնք [ո]հպարտութեամբ և նախատանօք ամբարտաւանութիւն կը խօսին արդարին դէմ ։
19 [չ]Որչափ մեծ է քու բարութիւնըդ՝ որ քեզմէ վախցողներուն համար պահեցիր , ու քեզի յուսացողներուն համար ըրիր , մարդոց որդիներուն առջեւը ։
20 [պ]Զանոնք քու երեսիդ ծածկոյթովը պիտի ծածկես մարդոց դաւաճանութիւններէն . [ջ]խորանի մէջ պիտի ծածկես զանոնք լեզուներուն հակառակութենէն ։
21 Օրհնեալ ըլլայ Տէրը , վասն զի [ռ]իր ողորմութիւնը զարմանալի ըրաւ ինծի [ս]պարսպաւոր քաղաքի մէջ ։
22 [վ]Իմ շփոթութեանս մէջ ըսի թէ [տ]կտրուեցայ ես քու աչքերուդ առջեւէն . սակայն դուն իմ աղօթքիս ձայնը լսեցիր՝ երբոր քեզի աղաղակեցի ։
23 [ր]Տէրը սիրեցէք՝ ով անոր բոլոր սուրբերը . վասն զի Տէրը հաւատացեալները կը պահէ , ու ամբարտաւանութիւն ընողներուն առատօրէն հատուցում կ'ընէ ։
24 [ց]Կտրիճ եղէք ու ձեր սիրտը թող զօրանայ , դուք ամէնքդ՝ որ Տէրոջը կը յուսաք ։

## ՍԱՂՄ . ԼԲ

1 Երջանկութիւնը մեղքերուն թողութեանը մէջ կը կայանայ ։ 3 Մեղաց խոստովանութիւնը խղճմտանքը կը հանդարտեցընէ ։ 8 Աստուծոյ խոստմունքները ուրախութիւն կը պատճառեն ։

Դաւիթին * երգը ։

1 Երանի անոր՝ որուն [ա]յանցանացը թողութիւն եղաւ , ու անոր մեղքերը ծածկուեցան ։
2 Երանի այն մարդուն՝ որ Տէրը [բ]անօրէնութիւն չսեպեր անոր , ու [գ]անոր հոգիին մէջը նենգութիւն չկայ ։
3 Երբոր լուռ կեցայ՝ ոսկորներս մաշեցան իմ ամէն օր աղաղակելովս .
4 Վասն զի ցորեկ ու գիշեր [դ]քու ձեռքդ իմ վրաս ծանրացաւ . իմ

մ Թուոց. զ. 25. 26 ; Սաղ. դ. 6 ; կէ. 1 ։
յ Սաղ. իե. 2 ։
ն Սաղ. ճժե. 17 ։
շ Սաղ. ժբ. 3 ։
ո ա Թագ. բ. 3 ; Սաղ. ղդ. 4 ; Յուդ. 15 ։
չ Ես. կդ. 4 ; ա Կոր. բ. 9 ։
պ Սաղ. իէ. 5 ; լա. 7 ։
ջ Յոբ. ե. 21 ։
ռ Սաղ. ժէ. 7 ։
ս ա Թագ. իգ. 7 ։
վ ա Թագ. իգ. 26 ; Սաղ. ճժզ. 11 ։
տ Ես. լը. 11. 12 ; Ողբ. գ. 54 ; Յովն. բ. 4 ։
ր Սաղ. լդ. 9 ։
ց Սաղ. իէ. 14 ։

* Կամ՝ իմաստութեան սաղմոս ։
ա Սաղ. ձե. 2 ; Հռովմ. դ. 6. 7. 8 ։
բ բ Կոր. ե. 19 ։
գ Յովհ. ա. 47 ։
դ ա Թագ. ե. 6. 11 ; Յոբ. լգ. 7 ; Սաղ. լը. 2 ։

թացութիւնս ամառուան չորու-
թեան դարձաւ ։ (Սէլայ ։)
5 Իմ մեղքս քեզի յայտնեցի , ու
իմ անօրէնութիւնս չծածկեցի .
ըսի թէ Տէրոջը պիտի խոստովա-
նիմ յանցանքներս . ու դուն թո-
ղուցիր իմ մեղքիս անօրէնութիւ-
նը ։ (Սէլայ ։)
6 Ասոր համար ամէն աստուածա-
պաշտ աղօթք պիտի ընէ քեզի
քու գտնուելու ժամանակը . յի-
րաւի շատ ջուրերուն հեղեղներուն
ատենը անոր պիտի չմօտենան ։
7 Դուն ես իմ ապաստանարանս .
նեղութենէն զիս պիտի պահես .
դուն զիս պիտի պատես ազատու-
թեան երգերով ։ (Սէլայ ։)
8 Քեզի պիտի սորվեցրնեմ , ու եր-
թալու ճամբադ պիտի ցուցրնեմ
քեզի . *խորհուրդ պիտի ընեմ քե-
զի հոմոր" . իմ աչքս քու վրադ
պիտի ըլլայ ։
9 Ձիի պէս ու ջորիի պէս մի՛ ըլ-
լաք , որ միտք չունին , որ իրենց
սանձին ու պախուրցին զարդովը
կապելու է , որ քեզի չմօտենան ։
10 Ամբարշտին տանջանքները շատ
պիտի ըլլան . սակայն Տէրոջը
յուսացողին չորս կողմը ողորմու-
թիւնք պիտի պատէ ։
11 Ո՛վ արդարներ՝ Տէրոջմով ու-
րախ եղէք ու ցնծացէք . ցնծու-
թեամբ երգեցէք դուք ամէնքդ՝ որ
սրտով ուղիղ էք ։

Առակ . իը . 13 ։ Եսա . կե . 24 ։ Ղու . ժե . 18 , 21 ։ Ա . Յով . ա . 9 ։
Եսա . ծե . 6 ։ Յով . է . 34 ։
Սաղ . թ . 9 ։ իէ . 5 ։ լա . 20 ։ ճժթ . 114 ։
Եզ . ժե . 1 ։ Դատ . ե . 1 ։ Թագ . իբ . 1 ։
* Կամ՝ Քեզ պիտի խրատեմ .
Առակ . իզ . 3 ։ Յակ . գ . 3 ։
Տես Յոբ . լե . 11 ։
Առակ . ժգ . 21 ։ Հռովմ . բ . 9 ։
Սաղ . լդ . 8 ։ Ադ . 12 ։ Առակ . ժզ . 20 ։ Երեմ . ժէ . 7 ։
Սաղ . կդ . 10 ։ կը . 3 ։

## ՍԱՂՄ . ԼԳ

1 Աստուած գովաբանութեան արժանի է իր բարութեանը համար , 6 իր կարողութեանը համար , 12 և իր նախախնամութեանը համար ։ 20 Պէտք է որ մեր վստահութիւնը Աստուծոյ վրայ դնենք ։

1 Ո՛վ արդարներ՝ Տէրոջմով ցնծա-
ցէք . ուղիղներուն կը վայլէ
օրհնութիւն երգել ։
2 Գովեցէք Տէրը քնարով , տասը
լար ունեցող տաւիղով սաղմոս եր-
գեցէք անոր ։
3 Նոր երգ մը երգեցէք անոր .
վարպետութեամբ նուագարաններ
զարկէք ցնծութեան ձայնով ։
4 Վասն զի Տէրոջը խօսքը շիտակ
է , ու անոր բոլոր գործքերը ճշմար-
տութեամբ են ։
5 Անիկայ արդարութիւնը ու ի-
րաւունքը կը սիրէ . Տէրոջը ո-
ղորմութիւնովը երկիրը լեցուն է ։
6 Տէրոջը խօսքովը երկինքը ստեղ-
ծուեցաւ , ու իր բերնին հոգիովը
անոր բոլոր զօրքը ։
7 Ծովուն ջուրերը †դէզի մը
պէս" կը ժողվէ , անդունդները
շտեմարաններուն մէջը կը դնէ ։
8 Բոլոր երկիրը թող Տէրոջմէն

Սաղ . լբ . 11 ։ դէ . 12 ։
Սաղ . ճխէ . 1 ։
Սաղ . ղր . 3 ։ Յայտ . 9 ։
Սաղ . ղզ . 1 ։ ղը . 1 ։ Յայտ . 9 ։ Յայտ . 1 ։ Եսա . խբ . 10 ։ Յայտ . ե . 9 ։
Սաղ . ժա . 7 ։ խե . 7 ։
Սաղ . ճժթ . 64 ։
Ծն . ա . 6 , 7 ։ Երր . ժա . 3 ։ Բ Պետ . գ . 5 ։
Յոբ . իզ . 13 ։
Ծն . բ . 1 ։
Ծն . ա . 9 ։ Յոբ . իզ . 10 ։ լը . 8 ։
† Կամ՝ որպէս թէ տիկի մը մէջ

վախնայ , ու անկէ դողան աշխար-
հի բոլոր բնակիչները ։
9 Վասն զի անիկայ ըսաւ , ու ե-
ղաւ . ինքը հրամայեց , ու հաստա-
տուեցաւ ։
10 Տէրը կը ցրուէ հեթանոսաց
խորհուրդները . փուճ կը հանէ
ժողովրդոց դիտաւորութիւնները ։
11 Տէրոջը խորհուրդը յաւիտեան
կը մնայ , ու անոր սրտին դիտա-
ւորութիւնները՝ ազգէ մինչև ազգ ։
12 Երանի՜ այն ազգին՝ որուն Աս-
տուածը Տէրն է . ու այն ժողո-
վուրդին՝ որ ինք իրեն ժառանգու-
թեան համար ընտրեց ,
13 Տէրը երկինքէն կը նայի , բոլոր
մարդոց որդիները կը տեսնէ .
14 Իր բնակութեանը տեղէն՝ աշ-
խարհի բոլոր բնակիչները կը դի-
տէ ։
15 Անոնց սիրտերը հաւասարապէս
ինքը ստեղծեց . անոնց բոլոր
գործերը կ՚իմանայ ։
16 Թագաւոր մը զօրքի շատու-
թիւնով չազատիր . ու զօրաւոր
մարդ մը ուժի շատութիւնով կը
փրկուի ։
17 Ձին՝ ազատութեան համար
պարապ բան է , ու իր ուժին շա-
տութիւնովը չկրնար ազատել ։
18 Ահա Տէրոջը աչքը իրմէ վախ-
ցողներուն , ու իր ողորմութեանը
յուսացողներուն վրայ է ,
19 Անոնց անձը մահուանէ փրկե-
լու , ու սովի ժամանակ զանոնք
ապրեցրնելու համար ։
20 Մեր անձը Տէրոջը կը սպասէ .
մեր օգնութիւնը ու մեր վահանը
անիկայ է ։
21 Վասն զի մեր սիրտերը անով
կ՚ուրախանան . ինչու որ անոր
սուրբ անուանը յուսացանք ։
22 Ով Տէր՝ քու ողորմութիւնդ մեր
վրայ ըլլայ , ինչպէս որ քեզի կը
յուսանք ։

Ծն . ա . 3 ։ Սաղ . ճլը . 5 ։
Եսա . ը . 10 ։ ժթ . 3 ։
Յոբ . իգ . 13 ։ Առակ . ժթ . 21 ։ Եսա . խզ . 10 ։
Սաղ . կե . 4 ։ ճխդ . 15 ։
Եւ . ժթ . 5 ։ Օր . է . 6 ։
Բ Մն . ժզ . 9 ։ Յոբ . իը . 24 ։ Սաղ . ժա . 4 ։ ժգ . 2 ։ Առակ . ժե . 3 ։
Յոբ . լդ . 21 ։ Երեմ . լբ . 19 ։
Սաղ . խդ . 6 ։
Սաղ . ի . 7 ։ ճխէ . 10 ։ Առակ . իա . 31 ։
Յոբ . լզ . 7 ։ Սաղ . լդ . 15 ։ Ա Պետ . գ . 12 ։
Սաղ . ճխէ . 11 ։
Յոբ . ե . 20 ։ Սաղ . լէ . 19 ։
Սաղ . կր . 1 , 5 ։ ճլ . 6 ։
Սաղ . ճժե . 9 , 10 , 11 ։
Սաղ . ժգ . 5 ։ Զաք . ժ . 7 ։ Յով . ժզ . 22 ։

## ՍԱՂՄ . ԼԴ

1 Դաւիթ զԱստուած կը գովաբանէ , ու իր փորձառութեամբը ուրիշներն ալ կը յորդորէ նոյն բանը ընելու ։ 8 Աստուծոյ յուսացողին երջանկութիւնը ։ 11 Աստուծմէ վախնալու յորդորանք մը ։ 15 Արդարներուն արտօնութիւնները ։

Սաղմոս Դաւթի . այն ատենը՝ որ ‡Ա-
բիմելէքին առջին յիմար ձևացաւ .
ան ալ դուրս ըրաւ զանիկայ , որ
գնաց ։

1 Ամէն ժամանակ Տէրը պիտի օրհ-
նեմ . անոր գովութիւնը միշտ
իմ բերանս պիտի ըլլայ ։
2 Իմ անձս Տէրոջմով պիտի պար-
ծի . խոնարհները պիտի լսեն և ու-
րախ ըլլան ։

‡ Ա՛ Անքուսին . տես Ա Թագ . իա . 10 , 13 ։
Եփե . ե . 20 ։ Ա Թես . ե . 18 ։ Բ Թես . ա . 3 ։ բ . 12 ։
Երեմ . թ . 24 ։ Ա Կոր . ա . 31 ։ Բ Կոր . ժ . 17 ։
Սաղ . ճժթ . 74 ։ ճիբ . 7 ։

3 դ Ինծի հետ Տէրը մեծցուցէ՛ք, ու մէկտեղ բարձրացընենք անոր անունը։
4 ե Տէրը խնդրեցի, ու ինծի պատասխան տուաւ, և իմ ամէն երկիւղներէս զիս փրկեց։
5 Անոր նայեցան ու լոյս առին. և անոնց երեսները չամչցան։
6 զ Աս աղքատը աղաղակեց, ու Տէրը լսեց անոր, և է զանիկայ իր բոլոր նեղութիւններէն փրկեց։
7 ը Տէրոջը հրեշտակը թ իր բանակը անկէ վախցողներուն չորս կողմը կը դնէ, ու զանոնք կը պահէ։
8 ժ Ճաշակեցէ՛ք ու տեսէ՛ք որ Տէրը բարի է. ի երանի՜ այն մարդուն՝ որ անոր կը յուսայ։
9 լ Տէրոջմէ վախցէ՛ք՝ ո՛վ անոր սուրբերը. վասն զի անկէ վախցողներուն բան մը պակաս չըլլար։
10 խ Առիւծի կորիւնները չքաւորութիւն ու անօթութիւն կը կրեն. ծ սակայն Տէրը փնտռողներուն բարութիւն մը պակաս պիտի չըլլայ։
11 Եկէ՛ք որդիք, մտիկ ըրէք ինծի, կ Տէրոջը վախը ձեզի սորվեցընեմ։
12 հ Ո՞վ է այն մարդը որ ապրիլ կ'ուզէ, ու շատ օրեր կը սիրէ, բարութիւն տեսնելու համար։
13 Քու լեզուդ չարութենէ պահէ՛, ու շրթունքներդ նենգութիւն խօսելէն։
14 ղ Չարութենէ հեռացի՛ր, ու բարութիւն ըրէ. ճ խաղաղութիւն փնտռէ, ու անոր ետեւէն գնա։
15 մ Տէրոջը աչքերը արդարներուն վրայ են, ու անոր ականջները անոնց յաղաղակին։
16 ն Տէրոջը երեսը չարագործներուն դէմ է, շ անոնց յիշատակը երկրէն բնաջինջ ընելու համար։
17 Արդարները կ'աղաղակեն, ու ո Տէրը կը լսէ, ու իրենց բոլոր նեղութիւններէն կը փրկէ զանոնք։
18 չ Տէրը մօտ է անոնց՝ պ որոնց սիրտը կոտրած է, ու հոգիով խոնարհածները կ'ապրեցընէ։
19 ջ Արդարին նեղութիւնները շատ են. ռ բայց Տէրը ամէնէն կը փրկէ զանիկայ։
20 Անոր բոլոր ոսկորները կը պահէ. ս անոնցմէ մէկը չկոտրուիր։
21 վ Չարութիւնը ամբարիշտը պիտի մեռցընէ, ու արդարը ատողները պիտի կորսուին։
22 Տէրը տ իր ծառաներուն անձը կը փրկէ. և իրեն յուսացողներէն բնաւ մէկը պիտի չկորսուի։

## ՍԱՂՄ. ԼԵ

1 Դաւիթ իր անձին ազատութեանը համար, ու իր թշնամիները նուաճելու համար կ'աղօթէ. 11 անոնց անիրաւութեանը համար կը գանգատի, 22 ու զԱստուած անոնց դէմ կը գրգռէ։

Սաղմոս Դաւթի։

1 ա Ո՛վ Տէր՝ ինծի հետ հակառակողներուն հետ հակառակէ՛. բ ինծի հետ պատերազմողներուն հետը պատերազմէ՛։
2 գ Ասպարը ու վահանը առ, ու ելի՛ր ինծի օգնութիւն ընելու։
3 Նաև նիզակը քաշէ՛, ու ճամբան գոցէ՛ զիս հալածողներուն դէմ. ըսէ՛ անձիս թէ՝ Քու փրկութիւնդ ես եմ։
4 Իմ անձս փնտռողները դ ամչնան ու խայտառակ ըլլան. ե ետ դառնան ու ամչնան անոնք որ ինծի համար չարութիւն կը խորհին։
5 զ Հովին առջևը եղած մղեղին պէս ըլլան անոնք. և Տէրոջը հրեշտակը փախցընէ զանոնք.
6 Անոնց ճամբան է խաւար ու սըկըրդեցընող ըլլայ, և Տէրոջը հրեշտակը հալածէ զանոնք.
7 Վասն զի զուր տեղը ը իրենց որոգայթը փոսի մէջ ինծի համար ծածկեցին, ու զուր տեղը իմ փորեցին անձիս համար։
8 Թող անոր վրայ թ յանկարծ աւերում գայ. և ժ իր ծածկած որոգայթը զինքը բռնէ. նոյն աւերման մէջը իյնայ։
9 Սակայն իմ անձս Տէրոջմով պիտի ցնծայ. ի անոր փրկութիւնովը ուրախ պիտի ըլլայ։
10 լ Իմ բոլոր ոսկորներս պիտի ըսեն. Տէ՛ր՝ խ ո՞վ քեզի նման է, որ աղքատը կ'ազատես անկէ՝ որ կը զօրանայ անոր վրայ, ու աղքատը և տնանկը իր յափշտակողէն։
11 ծ Սուտ վկաներ ելան, չգիտցածներս կը հարցընէին ինծի։
12 կ Աղէկութեան փոխարէն՝ ինծի գէշութիւն ըրին՝ կողոպտելով իմ անձս։
13 Բայց ես հ անոնց հիւանդութեան ատենը քուրձ կը հագնէի. իմ անձս ծոմով կը չարչարէի, ձ ու իմ աղօթքս իմ ծոցս *պիտի դառնայ։
14 Ինչպէս իմ ընկերիս կամ եղբօրս հետ՝ այնպէս ալ անոնց հետ կը վարուէի, իր մօրը համար սուգ ունեցողի մը պէս տրտմութեամբ կը ցածնայի։
15 Բայց անոնք իմ ղ կաղութեանս ատենը խնդացին ու ժողվուեցան. ճ զարնողները իմ վրաս ժողվուեցան, ու ես բան մը չէի գիտեր. մ կը ճեղքէին զիս ու չէին դադարեր.
16 Խնճոյքի կեղծաւոր խեղկատակներուն հետ յ ակռաներնին իմ վրաս կը կրճտցընէին։
17 Ո՛վ Տէր՝ մինչև ե՞րբ ն պիտի նա-

դ Սաղ. կթ. 30։ Ղու. ա. 46։
ե Մատ. է. 7։ Ղու. ժա. 9։
զ Սաղ. գ. 4։
է Հմր 17։ 19։ բ Թագ. իբ. 1։
ը Դան. զ. 22։ Եբր. ա. 14։
թ Տես Ծն. լա. 1. 2։ դ Թագ. զ. 17։ Զաք. թ. 8։
ժ Ա Պետ. բ. 3։
ի Սաղ. բ. 12։
լ Սաղ. լա. 23։
խ Յոբ. դ. 10. 11։
ծ Սաղ. ձդ. 11։
կ Սաղ. լը. 8։
հ Ա Պետ. գ. 10. 11։
ձ Յակ. ա. 26։ Ա Պետ. բ. 22։
ղ Սաղ. լէ. 27։ Ես. ա. 16. 17։
ճ Հռով. ժբ. 18։ Եբր. ժբ. 14։
մ Յոբ. լզ. 7։ Սաղ. լգ. 18։ Ա Պետ. գ. 12։
յ Հմր 6. 17։
ն Ղև. ժէ. 10։ Երեմ. խդ. 11։ Ամով. թ. 4։
շ Առակ. ժ. 7։
ո Հմր 6. 15. 19։ Սաղ. ճխե. 19. 20։
չ Սաղ. ճխե. 18։
պ Սաղ. ծա. 17։ Ես. ծէ. 15։ կա. 1։ կզ. 2։
ջ Առակ. իդ. 16։ Բ Տիմ. գ. 11. 12։
ռ Հմր 6. 17։
ս Յովհ. ժթ. 36։
վ Սաղ. ղդ. 23։
տ Բ Թագ. դ. 9։ Գ Թագ. ա. 29։ Սաղ. հա. 23։ Ճգ. 4։ Ողբ. գ. 58։

ա Սաղ. խդ. 1։ Ճժթ. 154։ Ողբ. գ. 58։
բ Եղ. ժգ. 25։
գ Ես. խբ. 13։
դ Հմր 26։ Սաղ. խ. 14. 15։ Հ. 2. 3։
ե Սաղ. ճիթ. 5։
զ Յոբ. իա. 18։ Սաղ. ա. 4։ ձգ. 13։ Ես. իթ. 5։ Ովս. ժգ. 3։
է Սաղ. հզ. 18։ Երեմ. իգ. 12։
ը Սաղ. թ. 15։
թ Ա Թես. ե. 3։
ժ Սաղ. է. 15. 16։ ծէ. 6։ Ճխա. 9. 10։ Առակ. ե. 22։
ի Սաղ. ժգ. 5։
լ Տես Սաղ. ծա. 8։
խ Եղ. ժե. 11։ Սաղ. հա. 19։
ծ Սաղ. իէ. 12։
կ Սաղ. լը. 20։ Ճթ. 3. 4. 5։ Երեմ. ժը. 20։ Յով. ժ. 32։
հ Յոբ. լ. 25։ Սաղ. կթ. 10. 11։
ձ Մատ. ժ. 13։ Ղու. ժ. 6։
* Կամ՝ կը դառնար։
ղ Սաղ. լը. 17։
ճ Յոբ. լ. 1. 8. 12։
մ Յոբ. ժզ. 9։
յ Յոբ. ժզ. 9։ Սաղ. լէ. 12։ Ողբ. բ. 16։
ն Ամբ. ա. 13։

լիս . ազատէ իմ անձս անոնց աւերումներէն , իմ կեանքս՝ առիւծի կորիւններէն ։

18 Մեծ ժողովքի մէջ քեզ պիտի գովեմ . շատ ժողովուրդի մէջ քեզ պիտի օրհնեմ ։

19 Զուր տեղը ինծի թշնամի եղողները թող իմ վրաս չխնդան . պատճառի գիս ատողները աչքով նշան թող չտան ։

20 Ինչու որ խաղաղութիւն չեն խօսիր , հապա երկրի մէջ հանդարտներուն դէմ նենգութիւն կը խորհին ,

21 Ու իրենց բերանը ինծի դէմ կը լայնցնեն՝ ըսելով . Վաշ վա՜շ , մեր աչքերը տեսան ։

22 Ո՛վ Տէր՝ դուն տեսար , լուռ մի՛ կենար . ո՛վ Տէր՝ ինծմէ մի՛ հեռանար ։

23 Արթնցի՛ր ո՛վ իմ Աստուածս ու Տէրս , ու իմ դատաստանիս ու դատիս ելիր ։

24 Քու արդարութեանդ համեմատ իրաւունք ըրէ ինծի՝ ով իմ Տէր Աստուածս , և իմ վրաս թող չխնդան .

25 Իրենց սրտին մէջը թող չըսեն թէ՝ Ահա՛ մեր կամքը եղաւ , ու թող չըսեն թէ՝ Կլլեցինք անիկայ ։

26 Թող ամչնան ու մէկտեղ խայտառակ ըլլան անոնք որ իմ չարիքիս վրայ կը խնդան . իմ վրաս հպարտացողները ամօթ ու խայտառակութիւն հագնին ։

27 Թող ցնծան ու ուրախանան անոնք որ իմ արդարութիւնս կ'ուզեն , ու միշտ թող ըսեն թէ՝ Աստուած մեծանայ , Որ իր ծառային խաղաղութիւնը կ'ուզէ ։

28 Ու իմ լեզուս քու արդարութիւնդ պիտի խօսի , ու ամէն օր քու գովութիւնդ ։

ՍԱՂՄ . ԼԶ

1 Չարերուն գէշ վիճակը ։ 5 Աստուծոյ ողորմութեանը գերազանցութիւնը ։ 10 Դաւիթ Աստուծոյ որդւոցը համար շնորհք կը խնդրէ ։

Գլխաւոր երգեցողին . Սաղմոս Դաւթի՝ Տէրոջը ծառային ։

1 Ամբարշտին չարութեանը վրայով սրտիս մէջի խօսքը սա է . Աստուծոյ վախը չկայ անոր աչքերուն առջին ։

2 Ինչու որ ինքզինքը կը շողոքորթէ իր աչքերուն առջին՝ իր անօրէնութեանը գտնուելուն ու ատելի ըլլալուն վրայով ։

3 Անոր բերնին խօսքերը անօրէնութիւն ու նենգութիւն են . բարի ընելու համար իմաստուն ըլլալը մէկդի ձգեց ։

Սաղ . ԻԲ . 21 ։ Սաղ . ԻԲ . 25 . 31 ։ Խ . 9 . 10 ։ ճԺա . 1 ։ Սաղ . ԺԴ . 4 ։ ԻԸ . 2 ։ ԼԸ . 16 ։ Սաղ . ԿԹ . 4 ։ ճԹ . 3 ։ ճԺԹ . 161 ։ Ողբ . Գ . 52 ։ Յօհ . ԺԵ . 25 ։ Յոբ . ԺԵ . 12 ։ Առակ . Զ . 13 ։ Ժ . 10 ։ Սաղ . ԻԲ . 13 ։ Սաղ . Խ . 15 ։ Եզ . 7 ։ Հ . 3 ։ Ել . Գ . 7 ։ Գոր . Է . 34 ։ Սաղ . ԻԸ . 1 ։ ԽԴ . 1 ։ Սաղ . Ժ . 1 ։ ԻԲ . 11 ։ 19 ։ ԼԸ . 21 ։ Հա . 12 ։ Սաղ . ԽԴ . 23 ։ Ա . 2 ։ Բ Թագ . Ա . 6 ։ Սաղ . ԻԳ . 1 ։ Հմր 19 ։ Սաղ . ԻԷ . 12 ։ Հ . 3 ։ ճԽ . 8 ։ Ողբ . Բ . 16 ։ Հմր 4 ։ Սաղ . Խ . 14 ։ Սաղ . ԼԸ . 16 ։ Սաղ . ճԹ . 29 ։ ճԼԲ . 18 ։ Հռով . ԺԲ . 15 ։ Ա Կոր . ԺԲ . 26 ։ Սաղ . Հ . 4 ։ Սաղ . ճԽԹ . 4 ։ Սաղ . Ծ . 15 ։ Ծա . 14 ։ Հա . 24 ։

Հռով . Գ . 18 ։ Բ Օր . ԻԹ . 19 ։ Սաղ . Ժ . 3 ։ ԽԹ . 18 ։ Սաղ . ԺԲ . 2 ։ Երեմ . Դ . 22 ։

4 Իր անկողինին մէջը անօրէնութիւն կը մտածէ , ու կը կենայ անանկ ճամբու մէջ՝ որ աղէկ չէ , և չարէն չզզուիր ։

5 Ո՛վ Տէր՝ քու ողորմութիւնդ մինչև երկինքը կը հասնի , ու քու ճշմարտութիւնդ մինչև ամպերը ։

6 Քու արդարութիւնդ հզօր լեռներու պէս է . քու իրաւունքդ մեծ անդունդ մըն է . մարդիկը ու անասունները դուն կ'ապրեցնես , ո՛վ Տէր ։

7 Ո՛վ Աստուած՝ ի՜նչ գերազանց է քու գթութիւնդ , որ մարդոց որդիքը քու թևերուդ հովանաւորութեանը կ'ապաւինին ։

8 Անոնք քու տանդ պարարտութենէն պիտի կշտանան . ու քու հաճութիւններուդ գետէն պիտի խմցրնես անոնց ։

9 Ինչու որ կենաց աղբիւրը քու քովդ է . քու լուսովդ լոյս պիտի տեսնենք ։

10 Քու գթութիւնդ քեզ ճանչցողներուն շարունակէ , ու քու արդարութիւնդ սրտով ուղիղներուն ։

11 Ամբարտաւանութեան ոտքը թող իմ վրաս չգայ , ու չարերուն ձեռքը զիս չշարժէ ։

12 Հոն ինկան անօրէնութիւն գործողները . գետինը զարնուեցան ու չկրցան վեր ելլել ։

ՍԱՂՄ . ԼԷ

1-40 Դաւիթ՝ բարեպաշտ ու չար մարդոց տարբեր վիճակները ստորագրելով՝ համբերելու ու Աստուծոյ ապաւինելու կը համոզէ մարդիկը ։

Սաղմոս Դաւթի ։

1 Չարերուն համար մի՛ նեղանար , անօրէնութիւն գործողներուն մի՛ նախանձիր .

2 Վասն զի անոնք խոտի պէս շուտով պիտի կտրուին , ու կանանչ խոտի պէս պիտի չորնան ։

3 Տէրո՛ջը յուսա ու բարութիւն ըրէ , երկրի վրայ բնակէ ու ճշմարտութեան մէջ արածուէ ,

4 Ու Տէրոջմով ուրախացի՛ր . և անիկայ կու տայ քեզի քու սրտիդ խնդրուածքները ։

5 Տէրո՛ջը յանձնէ քու ճամբադ , ու անո՛ր յուսայ , և անիկայ պիտի կատարէ .

6 Ու դուրս պիտի հանէ քու արդարութիւնդ լոյսի պէս , ու քու իրաւունքդ կէս օրուան պէս ։

7 Տէրոջը համբերէ՝ ու անոր սպասէ՛ . ու մի՛ նեղանար իր ճամբան յաջողութեամբ գացողին համար , ու խաբէութիւն ընող մարդուն համար ։

8 Դադարէ՝ բարկութենէն , ու

Առակ . Դ . 16 ։ Միք . Բ . 1 ։ Ես . ԿԵ . 2 ։ Սաղ . ԾԷ . 10 ։ ճԸ . 4 ։ Յոբ . Ժա . 8 ։ Սաղ . ՀԵ . 19 ։ Հռով . Ժա . 33 ։ Յոբ . Է . 20 ։ Սաղ . ճԽԵ . 9 ։ Տիմ . Դ . 10 ։ Սաղ . ԼԱ . 19 ։ Հռութ . Բ . 12 ։ Սաղ . ԺԷ . 8 ։ Զա . 4 ։ Սաղ . ԿԵ . 4 ։ Սաղ . ԺԶ . 11 ։ Յոբ . Ի . 17 ։ Յայտ . ԻԲ . 1 ։ Երեմ . Բ . 13 ։ Յօհ . Դ . 10 . 14 ։ Հաղթու . Բ . 9 ։ Երեմ . ԻԲ . 16 ։ Սաղ . Է . 10 ։ ԶԴ . 15 ։ ԶԷ . 11 ։ Սաղ . Ա . 5 ։

Ես . ԾԸ . 14 ։ Սաղ . ԾԵ . 22 ։ Առակ . ԺԶ . 3 ։ Մատ . Զ . 25 ։ Ղուկ . ԺԲ . 22 ։ Ա Պետ . Ե . 7 ։ Յոբ . Ժա . 17 ։ Միք . Է . 9 ։ Սաղ . ԿԲ . 1 ։ Ես . Լ . 15 ։ Ողբ . Դ . 26 ։ Հմր 1 , 8 ։ Երեմ . ԺԲ . 1 ։

արդողիլը վերջ ըրէ . Ւ մի՛ նեղանար,
որ չարութիւն ընես ։
9 Ժ Վասն զի չարագործները պիտի
կորսուին, սակայն Տէրոջը համբե-
րողները Էերկիրը պիտի ժառանգեն ։
10 Վասն զի Ւքիչ ժամանակէ ետև
ամբարիշտը պիտի չըլլայ, Ի և անոր
տեղը պիտի փնտռես, ու ինքը պի-
տի չգտնուի ։
11 Սակայն Ժ հեզերը պիտի ժառան-
գեն երկիրը, ու խաղաղութեան
առատութիւնովը ուրախ պիտի
ըլլան ։
12 Մեղաւորը արդարին դէմ չար կը
խորհի, Լու անոր վրայ ակռաները
կը կրճտցրնէ ։
13 Հ Տէրը ծաղր պիտի ընէ զանիկայ,
վասն զի Ձ անոր օրը հասնելու վրայ
կը տեսնէ ։
14 Մեղաւորները թուր քաշեցին,
ու աղեղնին լարեցին, աղքատը ու
տնանկը վար ձգելու համար, * շի-
տակ ճամբու մէջ քալողները" ըս-
պաննելու համար ։
15 Ղ Անոնց թուրը իրենց սիրտը պի-
տի մտնէ, ու անոնց աղեղները
պիտի կոտրտին ։
16 Ճ Արդարին քիչ բանը շատ ամբա-
րիշտներու առատ ստացուածքէն
աղէկ է ։
17 Մ Ինչու որ Յ ամբարիշտներուն բա-
զուկները պիտի կոտրուին . բայց
արդարներուն ապաւէնը Տէրն է ։
18 Յ Արդարներուն օրերը գիտէ Տէ-
րը . և անոնց ժառանգութիւնը
Ն յաւիտենական պիտի ըլլայ .
19 Փորձանքի ժամանակ պիտի չա-
մչնան, ու Շ սովի օրերը պիտի
կշտանան ։
20 Բայց ամբարիշտները պիտի կոր-
սուին, ու Տէրոջը թշնամիները
† դառնուկներու ճարպին" պէս պի-
տի սպառին, Չ մուխի պէս պիտի
սպառին ։
21 Ամբարիշտը փոխ կ'առնէ ու չվը-
ճարեր . սակայն Պ արդարը կ'ողորմի
ու կու տայ ։
22 Ջ Ինչու որ անոր օրհնածները պի-
տի ժառանգեն երկիրը . բայց անկէ
անիծուածները Ռ պիտի կորսուին ։
23 Ս Բարի մարդուն քայլերը Տէրոջ-
մէ կը հաստատուին, ու Անիկայ
անոր ճամբուն կը հաւնի ։
24 Վ Թէև իյնայ, պիտի չկործանի .
վասն զի Տէրը անոր ձեռքը կը
բռնէ ։
25 Տղայ էի ու ծերացայ . բայց ար-
դարը անտես եղած չտեսայ, կամ
անոր զաւակը Ւ հաց մուրացող ։
26 Ց Ամէն օր կ'ողորմի ու փոխ կու
տայ . և անոր սերունդը օրհնուած
է ։
27 Ւ Չարութենէ ետ կեցիր ու բա-
րութիւն ըրէ, և յաւիտեան պիտի
մնաս .
28 Ինչու որ Տէրը Փ կը սիրէ իրա-
ւունքը, և իր սուրբերը երեսէ
չձգեր . յաւիտեան կը պահուին
անոնք . Ք բայց ամբարիշտներուն
սերունդը պիտի կորսուի ։
29 Օ Արդարները պիտի ժառանգեն
երկիրը, ու յաւիտեան անոր վրայ
պիտի բնակին ։
30 Ֆ Արդարին բերանը իմաստու-
թիւն կը խօսի, ու անոր լեզուն
իրաւունք կը զրուցէ ։
31 Ա Իր Աստուծոյն օրէնքը իր սրտին
մէջն է . Բ անոր քայլերը պիտի չը-
սահին ։
32 Մեղաւորը Գ արդարը կը դիտէ,
և զանիկայ մեռցընելու ետևէ կ'իյ-
նայ ։
33 Տէրը Դ անոր ձեռքը պիտի չձգէ
զանիկայ, և անոր Ե դատաստանը
տեսնուած ատենը պիտի չդատա-
պարտէ զանիկայ ։
34 Զ Տէրոջը համբերէ՛ ու անոր ճամ-
բան պահէ՛, և անիկայ քեզ կը
բարձրացընէ որ երկիրը ժառանգես.
Է ամբարիշտներուն սատակումը
պիտի տեսնես ։
35 Ը Ամբարիշտը զօրացած տեսայ,
ու իր տեղը կեցող կանանչ ծառի
մը պէս տարածուած .
36 Բայց Թ ան անցաւ, ու ահա չկար .
և զանիկայ փնտռեցի, բայց չգըտ-
նուեցաւ ։
37 Արդարը նկատէ՛ ու ուղիղին նա-
յէ . վասն զի Ժ այն մարդուն վախ-
ճանը խաղաղութիւն է ։
38 Ի Իսկ անօրէնները մէկտեղ պիտի
կորսուին . ամբարիշտներուն վախ-
ճանը կորուստ պիտի ըլլայ ։
39 Լ Բայց արդարներուն փրկութիւ-
նը Տէրոջմէն է, Խ նեղութեան ժա-
մանակ Ծ անոնց ապաւէնն է ։
40 Ու Կ Տէրը պիտի օգնէ անոնց, և
պիտի ազատէ զանոնք . ամբա-
րիշտներէն պիտի ազատէ, ու պի-
տի փրկէ զանոնք, Հ վասն զի անոր
կը յուսան ։

## ՍԱՂՄ . ԼԸ

1—22 Դաւիթ իր ողորմելի վիճակին համար գթութիւն կը խնդրէ Աստուծմէ ։

Սաղմոս Դաւթի, յիշատակի համար ։

1 Ո՛վ Ձ Տէր՝ քու սրտմտութեամբդ
զիս մի՛ յանդիմաներ, ու բար-
կութեամբդ զիս մի՛ խրատեր ։
2 Վասն զի Ղ քու նետերդ իմ ներսի
դիս մխուեցան, և Ճ քու ձեռքդ իմ
վրաս կ'իջնէ ։
3 Իմ մարմնոյս մէջ առողջութիւն
չկայ քու բարկութեանդ համար,
Մ ոսկորներուս մէջ հանգստու-
թիւն չկայ իմ մեղքիս համար ։

Ա Սաղ. ԼԴ. 3. Եփե. Դ. 26. Բ Յոբ. ԻԵ. 13, 14. Գ Հմր 11, 22, 29. Եսա. ԿԵ. 13. Դ Եբր. Ժ. 36, 37. Ե Յոբ. Է. 10. Ի. 9. Զ Մատ. Ե. 5. Է Սաղ. ԼԵ. 16. Ը Սաղ. Բ. 4. Թ Թագ. Իւ. 10. * Եբր. ճամբով շիտակ եղողները. Ժ Միք. Ե. 6. Ի Առակ. ԺԵ. 16. ԺԶ. 8. Ա Տիմ. Զ. 6. Լ Յոբ. ԼԸ. 15. Սաղ. Ժ. 15. Եզեկ. Լ. 21, 22. Խ Սաղ. Ա. 6. Ծ Եսա. Կ. 21. Կ Յոբ. Ե. 20. Սաղ. ԼԳ. 19. † Կամ՝ պատուական արօտի. Հ Սաղ. ՃԲ. 3. Ձ Սաղ. ՃԺԲ. 5, 9. Ղ Առակ. Դ. 33. Ճ Հմր 9. Մ Թագ. Բ. 9. Առակ. ԺԴ. 9. Յ Սաղ. ԼԴ. 19, 20. Խ. 2. Ղա. 12. Առակ. ԻԴ. 16. Միք. Է. 8. Բ Կոր. Դ. 9. Ն Յոբ. ԺԵ. 23. Սաղ. ԾԹ. 15. ՃԹ. 10. Շ Բ Օր. ԺԵ. 8, 10. Սաղ. ՃԺԲ. 5, 9. Ո Սաղ. ԼԴ. 14. Եսա. Ա. 16, 17.

Չ Սաղ. ԺԱ. 7. Պ Սաղ. ԻԱ. 10. Առակ. Բ. 22. Եսա. ԺԴ. 20. Ջ Առակ. Բ. 21. Ռ Մատ. ԺԲ. 35. Ս Բ Օր. Զ. 6. Սաղ. Խ. 8. ՃԺԹ. 98. Եսա. ԾԱ. 7. Վ Սաղ. Ժ. 8. Տ Բ Պետ. Բ. 9. Ր Սաղ. ՃԹ. 31. Ց Հմր 9. Սաղ. ԻԵ. 14. Առակ. Ի. 22. Ւ Սաղ. ԾԲ. 5, 6. Ղա. 8. Փ Յոբ. Ե. 3. Ք Յոբ. Ի. 5. Ա Եսա. ԼԲ. 17. ԾԷ. 2. Օ Սաղ. Ա. 4. ԾԲ. 5. Ֆ Սաղ. Գ. 8. Ա Սաղ. Թ. 9. Բ Եսա. ԼԱ. 5. Գ Ա Մն. Ե. 20. Դան. Գ. 17, 28. Զ. 23.

Դ Սաղ. Զ. 1. Ե Յոբ. Զ. 4. Զ Սաղ. ԼԲ. 4. Է Սաղ. Զ. 2.

4 Ինչու որ [ի] անօրէնութիւններս գլխէս վեր բարձրացան. ծանր բեռի պէս [լ]* իմ վրաս ծանրացած են։
5 Վէրքերս հոտեցան ու փտեցան իմ յիմարութեանս պատճառովը։
6 Նուաստացայ ու [խ] խիստ ցածցայ. [ծ] ամէն օր տրտում կը պտըտիմ.
7 Վասն զի աղիքներս [կ] ջերմութիւնով լեցուեցան, ու [հ] մարմնոյս մէջ առողջութիւն չկայ։
8 Տկարացայ ու խիստ ճնշուեցայ. [ձ] սրտիս հեծութենէն մռնչեցի։
9 Ո՛վ Տէր՝ իմ ամէն բաղձանքս քու առջեւդ է, ու իմ հեծութիւնս քեզմէ չծածկուեցաւ։
10 Սիրտս կը բաբախէ, ոյժս զիս թող տուաւ, ու [ղ] իմ աչքերուս լոյսը՝ ան ալ իմ հետս չէ։
11 [ճ] Սիրականներս ու ընկերներս [մ] իմ չարչարանքէս հեռու կը կենան, ազգականներս ալ [յ] հեռու կը կենան.
12 Ու անձս փնտռողները [ն] ինծի որոգայթ կը լարեն, ու ինծի չարիք ուզողները [շ] անօրէնութիւն կը խօսին, և ամէն օր [ո] նենգութիւն կը մտածեն։
13 Սակայն [չ] ես խուլի պէս չեմ լսեր, [պ] ու բերանը չբացող համրի մը պէս եմ։
14 Եւ ես անանկ մարդու մը պէս եմ՝ որ չլսեր, ու հակառակ խօսք չկայ իր բերանը։
15 Վասն զի ո՛վ Տէր՝ [ջ] ես քեզի կը յուսամ, դուն պիտի պատասխանես՝ ո՛վ իմ Տէր Աստուածս։
16 Ինչու որ ըսի. [ռ] Թող չխնդան իմ վրաս. [ս] ոտքիս սահած ժամանակը [վ] ինծի դէմ չափէն կը մեծցընեն։
17 Վասն զի ես կաղ ըլլալու պատրաստ եմ, ու իմ ցաւս ամէն ատեն առջեւս է։
18 Ինչու որ [տ] անօրէնութիւնս պիտի պատմեմ, ու [ր] մեղքիս համար հոգ պիտի ընեմ։
19 Բայց թշնամիներս ողջ են, ուժովցան. [ց] զիս զուր տեղը ատողները շատցան.
20 Ու [ւ] աղէկութեան փոխարէն գէշութիւն ընողները ինծի դէմ կը կենան, [փ] վասն զի ես աղէկութեան ետեւէ կ՚երթամ։
21 Զիս մի՛ թողուր՝ ո՛վ Տէր, ո՛վ իմ Աստուածս՝ [ք] ինծմէ մի՛ հեռանար։
22 Ինծի օգնութիւն ընելու արտորցի՛ր ո՛վ Տէր՝ [օ] իմ փրկութիւնս։

ի Եզր. թ. 6 ; Սաղ. խ. 12 ;
լ Մատ. ժա. 28 ;
* Եբր. ինձմէ
խ Սաղ. լե. 14 ;
ծ Յոբ. լ. 28 ; Սաղ. խբ. 9 ; խգ. 2 ;
կ Յոբ. է. 5 ;
հ Հմր 3 ;
ձ Յոբ. գ. 24 ; Սաղ. իբ. 1 ; Եսա. ծթ. 11 ;
ղ Սաղ. զ. 7 ; ձը. 9 ;
ճ Սաղ. լա. 11 ;
մ Ղուկ. ժ. 31, 32 ;
յ Ղուկ. իգ. 49 ;
ն Բ Թագ. ժէ. 1, 2, 3 ;
շ Բ Թագ. ժզ. 7, 8 ;
ո Սաղ. լե. 20 ;
չ Տես Բ Թագ. ժզ. 10 ;
պ Սաղ. լթ. 2, 9 ;
ջ Բ Թագ. ժզ. 12 ; Սաղ. լթ. 7 ;
ռ Սաղ. ժգ. 4 ;
ս Բ Օր. լբ. 35 ;
վ Սաղ. լե. 26 ;
տ Սաղ. լա. 5 ; Առակ. իը. 13 ;
ր Բ Կոր. է. 9, 10 ;
ց Սաղ. լե. 19 ;
ւ Սաղ. լե. 12 ;
փ Տես Ա Պետ. գ. 13 ; Ա Յօհ. գ. 12 ;
ք Սաղ. լե. 22 ;
օ Սաղ. իէ. 1 ; կը. 2, 6 ; Եսա. ժբ. 2 ;

## ՍԱՂՄ . ԼԹ

1 Դաւիթին զգուշութիւնը իր խորհուրդներուն վրայով։ 4 Կենաց կարճութեանը և ունայնութեանը վրայ եղած խորհրդածութիւնը, 7 Աստուծոյ դատաստաններուն երկիւղը, 10 ու աղօթքը՝ անհամբերութեան սանձեր են։

Գլխաւոր երգեցողին, [ա] Իդիթունին. Սաղմոս Դաւթի։

1 Ըսի թէ [բ] ճամբաներուս զգուշութիւն ընեմ, որ լեզուովս մեղք չգործեմ. [գ] բերանս սանձով պահեմ՝ [դ] ամբարիշտը իմ առջեւս եղած ատենը։
2 [ե] Մունջ եղայ լռութիւնով, աղէկութեան վրայով ալ լռեցի, ու ցաւս շարժեցաւ։
3 Սիրտս բորբոքեցաւ ներսի դիս, † ջերմութեանս մէջ [զ] կրակ վառեցաւ. ան ատենը լեզուովս խօսեցայ։
4 [է] Ցուցո՛ւր ինծի՝ ո՛վ Տէր, իմ վերջս, ու օրերուս չափը ո՞րչափ է, որ գիտնամ թէ ինչպէս անցաւոր եմ։
5 Ահա իմ օրերս թիզերու չափ դըրիր, ու [ը] իմ կեանքս ոչինչի պէս է քու առջեւդ. [թ] Իրաւ ամէն մարդ թէեւ հաստատուած ըլլայ, բայց բոլորովին ունայնութիւն է։ (Սելա։)
6 Յիրաւի մարդը [ժ] ստուերի մը պէս կը պտըտի. արդարեւ փուճ տեղը անհանգիստ կ՚ըլլայ. [ի] կը դիզէ, բայց չգիտեր թէ ո՛վ պիտի առնէ զանոնք։
7 Ու հիմա ի՞նչ բանի սպասեմ՝ ո՛վ Տէր, [լ] իմ յոյսս քեզի է.
8 Փրկէ՛ զիս իմ բոլոր յանցանքներէս, իս [խ] յիմարներուն նախատինք ըլլալու մի՛ դներ։
9 [ծ] Մունջ եղայ ու բերանս չբացի, վասն զի [կ] դուն ըրիր։
10 [հ] Քու հարուածդ հեռացո՛ւր ինծմէ. ձեռքիդ զարնելովը ես կորսուեցայ։
11 Անօրէնութեան համար յանդիմանութիւններով կը խրատես մարդը. [ձ] ցեցի մը պէս կը հալեցընես անոր ցանկալի բաները. [ղ] Իրաւ ամէն մարդ ունայնութիւն է։ (Սելա։)
12 Ո՛վ Տէր՝ լսէ՛ իմ աղօթքս, ու ականջ դիր աղաղակիս. արցունքներուս մի՛ լռեր. [ճ] ինչու որ քու առջեւդ պանդուխտ մըն եմ ես, հիւր մը՝ [մ] իմ բոլոր նախնիքներուս պէս։
13 [յ] Թոյլտուութիւն ըրէ ինծի որ զուարթանամ քանի որ չեմ գացեր ան տեղը՝ որ [ն] ալ պիտի չգտնուիմ։

ա Ա Մն. ժզ. 41 ; իե. 1 ; Սաղ. կբ. և հէ. ին վերնագիրները
բ Գ Թագ. բ. 4 ; Դ Թագ. ժ. 31 ;
գ Սաղ. ճխա. 3 ; Յակ. գ. 2 ;
դ Կող. դ. 5 ;
ե Սաղ. լը. 13 ;
† Կամ՝ Մըտածութեանս
զ Երեմ. ի. 9 ;
է Սաղ. գ. 12 ; ճժթ. 84 ;
ը Սաղ. գ. 4 ;
թ Հմր 11 ; Սաղ. կբ. 9 ; ճխգ. 4 ;
ժ Ա Կոր. է. 31 ; Յակ. դ. 14 ;
ի Յոբ. իէ. 17 ; Ժող. բ. 18, 21, 26 ; ե. 14 ; Ղուկ. ժբ. 20, 21 ;
լ Սաղ. լը. 15 ;
խ Սաղ. խդ. 13 ; Հթ. 4 ;
ծ Ղև. ժ. 3 ; Յոբ. խ. 4, 5 ; Սաղ. լը. 13 ;
կ Բ Թագ. ժզ. 10 ; Յոբ. բ. 10 ;
հ Յոբ. թ. 34 ; ժգ. 21 ;
ձ Յոբ. գ. 19 ; ժգ. 28 ; Եսա. ծ. 9 ; Ովս. ե. 12 ;
ղ Հմր 5 ;
ճ Ղև. իե. 23 ; Ա Մն. իթ. 15 ; Սաղ. ճժթ. 19 ; Բ Կոր. ե. 6 ; Եբր. ժա. 13 ; Ա Պետ. ա. 17 ; բ. 11 ;
մ Ծն. խէ. 9 ;
յ Յոբ. ժ. 20, 21 ; ժդ. 5, 6 ;
ն Յոբ. ժդ. 10, 11, 12 ;

## ՍԱՂՄ . Խ

1 Աստուծոյ սպասելուն օգուտը։ 6 Հնազանդութիւնը խիստ ընդունելի զոհ է։ 11 Դաւիթ իր նեղութիւններուն զգացումովը աւելի ջերմեռանդութեամբ կ՚աղօթէ։

Գլխաւոր երգեցողին. Սաղմոս Դաւթի։

1 [ա] Սպասելով սպասեցի Տէրոջը, ու
ծռեցաւ ինծի, ու լսեց իմ ա-
ղաղակս.
2 Եւ զիս կորստեան փոսէն՝ [բ] տղմ-
մալից կաւէն հանեց, ու [գ] ոտքերս
վէմի վրայ ամուրցուց, [դ] քա-
լուածքս հաստատեց.
3 Ու բերանս դրաւ [ե] մէկ նոր երգ
մը՝ մեր Աստուծոյն գովութիւնը ։
[զ] Շատերը պիտի տեսնեն ու պիտի
վախնան, ու Տէրոջը պիտի յու-
սան ։
4 [է] Երանի՛ այն մարդուն՝ որ իր
յոյսը Տէրոջը վրայ կը դնէ, ու
[ը] ամբարիշտ հպարտներուն, ու ստու-
թեան դարձողներուն ։
5 [թ] Շատ են սքանչելիքներդ որ
դուն ըրեր ես՝ ո՛վ իմ Տէր Աս-
տուածս, [ժ] ու մեր վրայ ունեցած
խորհուրդներդ մէկը չկրնար կար-
գաւ պատմել քու առջիդ. պիտի
պատմէի ու խօսէի, բայց համրան-
քէն աւելի շատ են ։
6 [ի] Զոհի ու ընծայի չհաւնեցար.
հապա իմ ականջներս բացիր. ող-
ջակէզ ու մեղքի պատարագ չպա-
հանջեցիր ։
7 Այն ժամանակը ըսի թէ՝ Ահա՛
կու գամ ես. գիրքի տոմսի մէջ
[լ] ինծի համար գրուած է ։
8 Ո՛վ իմ Աստուածս՝ [խ] քու կամքդ
կատարելու փափաքեցայ, ու քու
օրէնքդ [ծ] իմ ներսի դիս է ։
9 [կ] Արդարութիւն քարոզեցի շատ-
ւոր ժողովքի մէջ. ահա՛ [հ] շրթ-
թունքներս չարգիլեցի. ո՛վ Տէր՝
[ձ] դուն գիտես ։
10 [ղ] Սրտիս մէջը գաղտուկ չպահեցի
քու արդարութիւնդ. հաւատար-
մութիւնդ ու փրկութիւնդ պատ-
մեցի. քու ողորմութիւնդ ու ճշ-
մարտութիւնդ շատւոր ժողովքէն
չծածկեցի ։
11 Դուն՝ ո՛վ Տէր, քու գթու-
թիւնդ ետ մի՛ պահեր ինծմէ. [ճ] քու
ողորմութիւնդ ու ճշմարտու-
թիւնդ ամէն ժամանակ պաշտպա-
նեն զիս ։
12 Վասն զի անթիւ չարիքներ զիս
պատեցին. [մ] անօրէնութիւններս
ինծի հասան, ու ես չեմ կրնար
տեսնել. գլխուս մազէն շատ են.
[յ] ու սիրտս զիս թողուց ։
13 Ո՛վ Տէր՝ [ն] զիս փրկելու կամք ըրէ.
ո՛վ Տէր՝ ինծի օգնելու արտորցի՛ր ։
14 [շ] Թող ամչնան ու մէկտեղ խայ-
տառակ ըլլան իմ անձս փնտռող-
ները անիկայ կորսնցնելու հա-
մար. ետ դառնան ու ամօթով
ըլլան ինծի չարութիւն ուզողնե-
րը ։
15 [ո] Թող [*] ամչնալով [չ] կործանին
անոնք որ ինծի Վա՜շ վա՜շ կ՚ըսեն ։
16 [պ] Ամէն քեզ փնտռողները քեզ-
մով թող ցնծան ու ուրախանան.
քու փրկութիւնդ սիրողները [ջ] ա-
մէն ժամանակ թող ըսեն. Տէրը
մեծնայ ։
17 [ռ] Բայց ես աղքատ ու տնանկ
եմ. [ս] սակայն Տէրը հոգ կը տանի
ինծի. իմ օգնականս ու փրկիչս
դուն ես. ո՛վ իմ Աստուածս՝ մի՛
ուշանար ։

## ՍԱՂՄ. ԽԱ

1 Աստուած աղքատին հոգ կը տանի ։ 4 Դաւիթ իր թշնամիներուն նենգութեանը համար կը գանգատի ։ 10 Օգնութեան համար Աստուծոյ կը դիմէ ։

Գլխաւոր երգեցողին. Սաղմոս Դաւ-
թի ։

1 [ա] Երանի՛ անոր՝ որ աղքատին հոգ
կը տանի. նեղութեան օրը
Տէրը պիտի փրկէ զանիկայ ։
2 Տէրը պիտի պահէ ու ապրեցնէ
զանիկայ. երանելի պիտի ըլլայ
երկրի վրայ. [բ] ու թշնամիներուն
կամացը պիտի չմատնես զանիկայ ։
3 Տէրը անոր ոյժ պիտի տայ տը-
կարութեան անկողինին մէջը. ա-
նոր ամէն անկողինը պիտի դար-
ձրնես անոր հիւանդութեան ա-
տենը ։
4 Ես ըսի. Ո՛վ Տէր՝ ողորմէ՛ ին-
ծի, [գ] բժշկէ՛ իմ անձս, ինչու որ ես
քեզի դէմ մեղանչեցի ։
5 Թշնամիներս գէշ կը խօսին իմ
վրայովս, ըսելով թէ՝ Ե՞րբ պիտի
մեռնի՝ ու անունը կորսուի ։
6 Թէ որ մէկը ինծի գալու ըլլայ
տեսնելու համար, [դ] ունայնութիւն
կը խօսի. իր սիրտը անօրէնութիւն
կը ժողվէ իրեն համար, ու դուրս
ելլելով զրուցէ ։
7 Ինծի դէմ մէկտեղ կը փսփսան
ամէն ատողները. իմ վրայովս
չարութիւն կը խորհին.
8 Կ՚ըսեն թէ՝ Չարութեան բան մը
անոր վրայ թափեցաւ. ու հիմա որ
պառկած է, ալ պիտի չելլէ ։
9 [ե] Մինչև անգամ իմ բարեկամս՝
որուն ապաւիներ էի, [զ] իմ հացս
ուտողը՝ ինծի դէմ կրունկ վեր-
ցուց ։
10 Սակայն ով Տէր՝ դուն ողորմէ՛
ինծի ու կանգնեցո՛ւր զիս, ու ես
փոխարէնը տամ անոնց ։
11 Ասկէ գիտեմ որ ինծի կը հաւ-
նիս, որ թշնամիս իմ վրաս չպար-
ծենար ։
12 Եւ զիս իմ անմեղութեանս մէջ
կը պահես, ու յաւիտեան [է] զիս
քու առջիդ կը կայնեցընես ։
13 [ը] Օրհնեա՛լ ըլլայ Իսրայէլին Տէր
Աստուածը յաւիտենանս յաւիտե-
նից ։ Ամէն ու ամէն ։

[ա] Սաղ. ԻԵ. 14 ; ԼԵ. 7 ։
[բ] Սաղ. ԿԹ. 2. 14 ։
[գ] Սաղ. ԻԵ. 5 ։
[դ] Սաղ. ԼԵ. 23 ։
[ե] Սաղ. ԼԴ. 3 ։
[զ] Սաղ. ԾԲ. 6 ։
[է] Սաղ. ԼԴ. 8 ; Երեմ. ԺԷ. 7 ։
[ը] Սաղ. ՀԱ. 3. 7 ։
[թ] Ել. ԺԵ. 11 ; Յոբ Ե. 9 ; Թ. 10 ; Սաղ. ՀԱ. 15 ; ՂԲ. 5 ; ՃԼԹ. 6. 17 ։
[ժ] Ես. ԾԵ. 8 ։
[ի] Ա Թագ. ԺԵ. 22 ; Սաղ. Ծ. 8 ; ԾԱ. 16 ; Ես. Ա. 11 ; ԿԶ. 3 ; Ովս. Զ. 6 ; Մատթ. Թ. 13 ; ԺԲ. 7 ; Եբր. Ժ. 5 ։
[լ] Ղուկ. ԻԴ. 44 ։
[խ] Սաղ. ՃԺԹ. 16, 24, 47, 92 ; Յոհ. Դ. 34 ; Հռովմ. Է. 22 ։
[ծ] Սաղ. ԼԵ. 31 ; Երեմ. ԼԱ. 33 ; Բ Կոր. Գ. 3 ։
[կ] Սաղ. ԻԲ. 22, 25 ; ԼԵ. 15 ։
[հ] Սաղ. ՃԺԹ. 13 ։
[ձ] Սաղ. ՃԼԹ. 2 ։
[ղ] Գործ. Ի. 20, 27 ։
[ճ] Սաղ. ԽԳ. 3 ; ԾԷ. 3 ; ԿԱ. 7 ։
[մ] Սաղ. ԼԸ. 4 ։
[յ] Սաղ. ՀԴ. 26 ։
[ն] Սաղ. Հ. 1, ՀԱ ։
[շ] Սաղ. ԼԵ. 4. 26 ; Հ. 2, 3 ; ՀԱ. 13 ։
[ո] Սաղ. Հ. 3 ։
[*] Կամ՝ իրենց ամօթին պատճառով
[չ] Սաղ. ՀԴ. 19 ։
[պ] Սաղ. Հ. 4 ։
[ջ] Սաղ. ԼԹ. 27 ։
[ռ] Սաղ. Հ. 5 ։
[ս] Ա Պետ. Ե. 7 ։

[ա] Առակ. ԺԴ. 21 ։
[բ] Սաղ. ԻԵ. 12 ։
[գ] Սաղ. Զ. 2 ; ՃԽԷ. 3 ։
[դ] Սաղ. ԺԲ. 2 ; Առակ. ԻԶ. 24, 25, 26 ։
[ե] Բ Թագ. ԺԵ. 12 ; Յոբ. ԺԹ. 19 ; Սաղ. ԾԵ. 12, 13, 20 ; Երեմ. Ի. 10 ։
[զ] Աբդ. 7 ; Յոհ. ԺԳ. 18 ։
[է] Յոբ. ԼԶ. 7 ; Սաղ. ԼԴ. 15 ։
[ը] Սաղ. ՃԶ. 48 ։

## ՍԱՂՄ · ԽԲ

1 Դաւիթ կը փափաքի Աստուծոյ ծառայելու՝ խորանին մէջ ։ 5 Իր անձը կը քաջալերէ որ Աստուծոյ ապաւինի ։

Գլխաւոր երգեցողին ․ Կորխի որդւոցը երգը ։

1 Ինչպէս որ եղջերուն ջուրի վտակներուն կը փափաքի, անանկ ալ իմ անձս քեզի կը փափաքի՝ ով Աստուած ։

2 ա Հոգիս ծարաւի է Աստուծոյ՝ բ կենդանի Աստուծոյն ․ ե՞րբ պիտի գամ ու երևնամ Աստուծոյ առջին ։

3 Ցորեկ ու գիշեր գ արցունքներս ինծի հաց եղան ․ որովհետև դ ամէն օր ինծի կ'ըսեն թէ՝ Ո՞ւր է քու Աստուածդ ։

4 Աս բաները միտքս կը բերեմ, ու ե հոգիս կը թափեմ իմ ներսի դիս, փափաքելով որ բազմութեան հետ երթամ, զ անոնց հետ հանդէսով Աստուծոյ տունը մտնեմ՝ ուրախութեան ու օրհնութեան ձայնով, տօնախմբող բազմութեան հետ ։

5 է Ինչո՞ւ կը ցածնաս՝ ո՛վ իմ հոգիս, և ինչո՞ւ իմ ներսի դիս անհանգիստ ես ․ ը Աստուծոյ յուսա ․ ինչու որ անգամ մըն ալ զանիկայ պիտի գովեմ իր երեսին փրկութեանը համար ։

6 Ո՛վ իմ Աստուածս՝ հոգիս իմ ներսի դիս կը ցածնայ ․ անոր համար քեզ կը յիշեմ Յորդանանու երկրէն ու Հերմոններէն ու Փոքր լեռնէն ։

7 թ Անդունդը անդունդին կը կանչէ քու յորձանքներուդ ձայնովը ․ ժ քու ամէն կոհակներդ ու ալիքներդ իմ վրայէս անցան ։

8 Ցորեկը Տէրը պիտի ի պատուիրէ իր ողորմութեանը ․ ու լ գիշերը իր երգը ինծի հետ պիտի ըլլայ ․ ու աղօթքս իմ կենացս Աստուծոյն ըլլայ ։

9 Պիտի ըսեմ Աստուծոյ՝ իմ Վէմիս ․ Ինչո՞ւ զիս մոռցեր ես, խ ինչո՞ւ տրտում պտըտիմ թշնամիին հարստահարութենէն ։

10 Ոսկորներս կոտրտելու չափ թշնամիներս զիս կը նախատեն ծ ամէն օր ինծի ըսելով թէ՝ Ո՞ւր է քու Աստուածդ ։

11 կ Ինչո՞ւ կը ցածնաս՝ ո՛վ իմ հոգիս, և ինչո՞ւ իմ ներսի դիս անհանգիստ ես ․ Աստուծոյ յուսա ․ ինչու որ անգամ մըն ալ զանիկայ պիտի գովեմ ․ Ան է իմ երեսիս փրկութիւնը ու իմ Աստուածս ։

ա Սաղ. ԿԳ. 1։ ՁԴ. 2։ Յովհ. Է. 37։
բ Ա Թեսաղ. Ա. 9։
գ Սաղ. Ձ. 5։ ԾՐ. 9։
դ Հմր 10։ Սաղ. ՀԹ. 10։ ՃԺԵ. 2։
ե Յոբ. Լ. 16։ Սաղ. ԿԲ. 8։
զ Եսա. Լ. 29։
է Հմր 11։ Սաղ. ԽԳ. 5։
ը Ողբ. Գ. 24։
թ Երեմ. Դ. 20։ Եզեկ. Է. 26։
ժ Սաղ. ՁԸ. 7։ Յովն. Բ. 3։
ի Ղև. ԻԵ. 21։ Բ Օր. ԻԸ. 8։
լ Յոբ. ԼԵ. 10։ Սաղ. ԼԲ. 7։ ԿԳ. 6։ ՃԽԹ. 5։
խ Սաղ. ԼԸ. 6։ ԽԴ. 2։
ծ Հմր 3։ Յովէլ. Բ. 17։ Միք. Է. 10։
կ Հմր 5։ Սաղ. ԽԳ. 5։

## ՍԱՂՄ · ԽԳ

1 Դաւիթ աղօթք կ'ընէ Աստուծոյ որ զինքը խորանը դարձընէ, ու կը խոստանայ ուրախութեամբ անոր ծառայելու ։ 5 Իր անձը կը քաջալերէ որ Աստուծոյ ապաւինի ։

1 ա Ինծի դատաստան ըրէ՝ ով Աստուած, ու բ իրաւունքս պաշտպանէ սուրբ չեղող ազգէն ․ Նենգաւոր ու անօրէն մարդէն զիս ազատէ ։

2 Քանզի դուն ես գ իմ ամրութեանս Աստուածը ․ ինչո՞ւ զիս կը մերժես, դ ինչո՞ւ տրտում պտըտիմ թշնամիին հարստահարութենէն ։

3 ե Քու լոյսդ ու ճշմարտութիւնդ ղրկէ ․ անոնք առաջնորդեն ինծի, ու զիս հանեն զ քու սուրբ լեռդ ու քու բնակարաններդ ։

4 Ու Աստուծոյ սեղանին քովը պիտի երթամ, իմ ուրախութեանս ու ցնծութեանս Աստուծոյն առջին ․ ու քեզ քնարով պիտի գովեմ, ո՛վ Աստուած՝ իմ Աստուածս ։

5 է Ինչո՞ւ կը ցածնաս՝ ո՛վ իմ հոգիս, և ինչո՞ւ իմ ներսի դիս անհանգիստ ես ․ Աստուծոյ յուսա ․ ինչու որ անգամ մըն ալ զանիկայ պիտի գովեմ ․ Ան է իմ երեսիս փրկութիւնը ու իմ Աստուածս ։

ա Սաղ. ԻԶ. 1։ ԼԵ. 24։
բ Սաղ. ԼԵ. 1։
գ Սաղ. ԻԸ. 7։
դ Սաղ. ԽԲ. 9։
ե Սաղ. Խ. 11։ Ծէ. 3։
զ Սաղ. Գ. 4։
է Սաղ. ԽԲ. 5, 11։

## ՍԱՂՄ · ԽԴ

1 Եկեղեցին իր առջի ընդունած շնորհքները յիշելով՝ ներկայ ժամանակի չարիքներուն համար կը գանգատի ։ 17 Իր անկեղծութիւնը խոստովանելով՝ 24 ջերմեռանդութեամբ կ'աղօթէ օգնութեան համար ։

Գլխաւոր երգեցողին ․ Կորխի որդւոցը երգը ։

1 Ո՛վ Աստուած՝ մեր ականջներովը լսեցինք, ա հայրերնիս մեզի պատմեցին ան գործը՝ որ անոնց օրերը գործեցիր առջի ժամանակը ։

2 բ Դուն քու ձեռքովդ հեթանոսները քշեցիր, ու * զանոնք տնկեցիր ․ չարչարեցիր ժողովուրդները, ու վռնտեցիր զանոնք ։

3 Քանզի գ չէ թէ իրենց սրովը ժառանգեցին երկիրը, ու չէ թէ իրենց բազուկը զիրենք փրկեց ․ հապա քու աջ ձեռքդ ու քու բազուկդ և քու երեսիդ լոյսը ․ դ վասն զի անոնց հաճեցար ։

4 ե Դուն ինքդ ես իմ թագաւորս՝ ո՛վ Աստուած, հրաման տուր Յակոբին փրկութիւններուն համար ։

5 Քեզմով զ թշնամիներնիս գետինը պիտի զարնենք ․ մեր վրայ ելլողները քու անունովդ ոտքի տակ պիտի առնենք ։

6 Վասն զի է աղեղիս չեմ յուսար, ու թուրս զիս չկրնար ազատել ․

7 Հապա դուն մեզ կը փրկես մեր թշնամիներէն, ու ը մեզ ատողները ամօթով կ'ընես ։

ա Ել. ԺԲ. 26, 27։ Սաղ. ՀԸ. 3։
բ Ել. ԺԵ. 17։ Բ Օր. Է. 1։ Սաղ. ՀԸ. 55։ Ձ. 8։
* Եբ. հայրերնիս
գ Բ Օր. Ը. 17։ Յես. ԻԴ. 12։
դ Բ Օր. Դ. 37։ Է. 7, 8։
ե Սաղ. ՀԴ. 12։
զ Դան. Ը. 4։
է Սաղ. ԼԴ. 16։ Ովս. Ա. 7։
ը Սաղ. Խ. 14։

8 Ամէն օր Աստուծով կը պարծենանք, ու յաւիտեան քու անունդ պիտի գովենք։ (Սէլայ։)

9 Սակայն մեզ մերժեցիր ու խայտառակ ըրիր, ու մեր զօրքերուն հետը չելար։

10 Թշնամիէն մեզ ետ դարձուցիր, ու մեզ ատողները մեզ կողոպտեցին իրենց համար։

11 Մեզ ոչխարի պէս ուտուելու տուիր, ու հեթանոսներուն մէջը մեզ ցրուեցիր։

12 Քու ժողովուրդդ ոչինչ գնով ծախեցիր, ու չաւելցուցիր քու հարստութիւնդ անոնց գիններովը։

13 Դրացիներնուս առջեւ մեզ խայտառակ ըրիր, մեր բոլորտիքը եղողներուն ծաղր ու կատակ։

14 Մեզ հեթանոսներուն մէջը առակ ըրիր, ժողովուրդներուն մէջը գլուխնին երերցնելու պատճառ։

15 Ամէն օր իմ նախատինքս առջեւս է, ու երեսիս ամօթը զիս կը ծածկէ,

16 Նախատողին ու հայհոյողին ձայնէն, թշնամիին ու վրէժխնդրին երեսէն։

17 Աս ամէնը մեր վրայ եկաւ. սակայն մենք քեզ չմոռցանք, և քու ուխտիդ սուտ չելանք.

18 Սիրտերնիս ետ չդարձան, ու քալուածքնիս քու ճամբայէդ դուրս չելան.

19 Թէպէտ ճագարներուն եղած տեղը մեզ ճզմեցիր, ու մահուան ստուերովը մեզ ծածկեցիր։

20 Թէ որ մեր Աստուծոյն անունը մոռցեր ենք, կամ օտար աստուծոյ ձեռքերնիս երկնցուցեր ենք,

21 Միթէ Աստուած աս բանը պիտի չփնտռէ՞, որովհետեւ ինքը սրտին գաղտնիքները գիտէ։

22 Բայց ամէն օր քեզի համար կը սպաննուինք, մորթուելու ոչխարի պէս կը սեպուինք։

23 Արթնցիր ով Տէր, ինչո՞ւ կը քնանաս, ելի՛ր, զմի մերժեր մեզ յաւիտեան։

24 Ինչո՞ւ երեսդ կը ծածկես, մեր տրտմութիւնը ու տառապանքը կը մոռնաս։

25 Ինչու որ մեր անձը մինչեւ հողը ծռեցաւ; մեր փորը գետինը փակաւ։

26 Ելի՛ր մեր օգնութեանը, ու ազատէ՛ մեզ քու ողորմութեանդ համար։

## ՍԱՂՄ. ԽԵ

1 Քրիստոսին թագաւորութեանը վեհափառութիւնը ու շնորհքը։ 10 Եկեղեցիին պարտաւորութիւնները ու արտօնութիւնները։

Գլխաւոր երգեցողին. Շօշանիմի վրայ. Կորխի որդւոցը քերթուածը. երգ սիրոյ։

1 Իմ սրտէս բարի խօսք կը բղխի. շարադրածս թագաւորին համար կը խօսիմ. իմ լեզուս արագագիր դպիրին գրչին պէս է։

2 Դուն մարդոց որդիներէն աւելի գեղեցիկ ես. քու շրթանցդ վրայ շնորհք թափուած է. անոր համար Աստուած քեզ օրհնեց յաւիտեան։

3 Ով Հզօր, թուրդ մէջքդ կապէ քու փառքովդ ու վայելչութիւնովդ։

4 Ու քու վայելչութիւնովդ յաջողուէ. ճշմարտութեան ու հեզութեան և արդարութեան համար հեծիր. ու քու աջ ձեռքդ քեզի ահաւոր բաներ պիտի սորվեցնէ։

5 Քու նետերդ սրուած են, թագաւորին թշնամիներուն սրտին մէջը պիտի մտնեն. ժողովուրդները քու տակդ պիտի իյնան։

6 Ով Աստուած, քու աթոռդ յաւիտեանս յաւիտենից է. քու թագաւորութեանդ գաւազանը ուղղութեան գաւազան է.

7 Արդարութիւնը կը սիրես ու անօրէնութիւնը կ՚ատես. անոր համար ով Աստուած, քու Աստուածդ ուրախութեան եղով քեզ օծեց քու ընկերներէդ աւելի։

8 Քու բոլոր հանդերձներդ զմուռս ու հալուէ և կասիայ են, փղոսկրէ պալատներէն *երաժշտական լարերը քեզ ուրախացուցին։

9 Թագաւորներուն աղջիկները քու պատուականներուդ մէջն են. թագուհին քու աջ կողմդ կը կանգնի Ոփիրի ոսկիով զարդարուած։

10 Ով աղջիկ, լսէ՛ ու տե՛ս, և քու ականջդ ծռէ՛. մոռցիր քու ժողովուրդդ ու քու հօրդ տունը։

11 Ան ատենը թագաւորը պիտի ցանկայ քու գեղեցկութեանդ, ինչու որ ան է քու տէրդ, ու անոր երկրպագութիւն ըրէ։

12 Եւ Տիւրոսին աղջիկը, ժողովուրդին հարուստները ընծայով պիտի խնդրեն քու երեսդ։

13 Թագաւորին աղջիկը բոլորովին փառաւոր է ներսը, ոսկի թելով հիւսուած է իր հանդերձը։

14 Նկարակերպած հանդերձով պիտի բերուի թագաւորին. անոր ետեւէն եկող աղջիկ ընկերները քեզի պիտի բերուին։

15 Ցնծութիւնով ու ուրախութիւնով պիտի բերուին. թագաւորին պալատը պիտի մտնեն։

16 Քու հայրերուդ տեղը որդիքդ պիտի ըլլան, բոլոր երկրին մէջ ճիշխաններ պիտի ընես անոնք։
17 Քու անունդ յիշակել պիտի տամ ազգէ մինչև ազգ. անոր համար ժողովուրդները քեզ պիտի գովեն յաւիտեանս յաւիտենից։

ճ Պետ. բ. 9։ Յայտ. ա. 6։ ե. 10։ ի. 6։ Մաղ. ա. 11։

## ՍԱՂՄ. ԽԶ

1 Եկեղեցիին Աստուծոյ վրայ ունեցած վստահութիւնը։ 8 Զանիկայ դիտելու համար յորդորանք մը։

Գլխաւոր երգեցողին. Կորխի որդւոցը երգը Աղամօթի վրայ։

1 Աստուած մեր ապաւէնը ու զօրութիւնն է. նեղութիւններուն մէջը խիստ օգնական կը գտնուի։
2 Անոր համար պիտի չվախնանք, թէև երկիրը փոխուի, ու լեռները ծովուն մէջտեղը ձգուին.
3 Թէև անոր ջուրերը գոռան ու պղտորին, լեռները դողան անոր ուռենալովը։ (Սէլա։)
4 Գետի վտակները պիտի ուրախացընեն Աստուծոյ քաղաքը՝ Բարձրելոյն սուրբ բնակարանները։
5 Աստուած անոր մէջն է, անիկայ պիտի չսասանի. Աստուած անոր պիտի օգնէ առտուանց կանուխ։
6 Հեթանոսները կը խռովին, թագաւորութիւնները կը շարժին. Բարձրեալը իր ձայնը կու տայ, երկիրը կը հալի։
7 Զօրաց Տէրը մեզի հետ է։ Յակոբին Աստուածը մեզի ապաւէն է։ (Սէլա։)
8 Եկէ՛ք տեսէ՛ք Տէրոջը գործքերը, որ աւերումներ ըրաւ երկրի մէջ։
9 Պատերազմները կը դադարեցընէ մինչև երկրի ծայրը. աղեղը կը կոտրտէ, ու նիզակը կը ջարդէ, կառքերը կրակով կ'այրէ։
10 Հանդարտ կեցէք ու ճանչցէ՛ք որ ես եմ Աստուած. հեթանոսներուն մէջը պիտի բարձրանամ, երկրի վրայ պիտի բարձրանամ։
11 Զօրաց Տէրը մեզի հետ է. Յակոբին Աստուածը մեզի ապաւէն է։ (Սէլա։)

ա Մն. ժե. 20։ բ Սաղ. կբ. 7, 8։ Զա. 2։ Ճխբ. 5։ գ Օր. դ. 7։ Սաղ. ճխե. 18։ դ Սաղ. ղդ. 3, 4։ Երեմ. ե. 22։ Մատ. է. 25։ ե Տես Ես. ը. 7։ զ Սաղ. խը. 1, 8։ Ես. կ. 14։ է Օր. իդ. 14։ Ես. ժբ. 6։ Եզեկ. խգ. 7, 9։ Ովս. ժա. 9։ Յովել. բ. 27։ Սոփ. գ. 15։ Զաք. բ. 5, 10, 11։ ը. 3։ ը Սաղ. ր. 1։ թ Յես. բ. 9, 24։ ժ Հմր. 11։ Թու. ժդ. 9։ ի Մն. ժդ. 12։ ի Սաղ. կզ. 5։ լ Ես. ր. 4։ խ Սաղ. հզ. 3։ ծ Եզեկ. լթ. 9։ կ Ես. բ. 11, 17։ հ Հմր. 7։

## ՍԱՂՄ. ԽԷ

1—9 Ազգերուն յորդորանք մը՝ որ ուրախութեամբ Քրիստոսի թագաւորութիւնը ընդունին։

Գլխաւոր երգեցողին. Կորխի որդւոցը Սաղմոսը։

1 Ծափ զարկէք ամէն ժողովուրդներ, ցնծութեան ձայնով Աստուծոյ աղաղակեցէք։

ա Ես. ծե. 12։

2 Վասն զի Տէրը՝ Բարձրեալ, Ահարկու է. բոլոր երկրի վրայ մեծ Թագաւոր է։
3 Ժողովուրդները մեզի կը հնազանդեցընէ, ու ազգերը մեր ոտքերուն տակը։
4 Ընտրեց մեզի մեր ժառանգութիւնը, Յակոբին փառաւորութիւնը՝ որ ինքը սիրեց։ (Սէլա։)
5 Աստուած ցնծութիւնով վեր ելաւ, Տէրը փողի ձայնով։
6 Սաղմոս երգեցէք Աստուծոյ, սաղմոս երգեցէք. սաղմոս երգեցէք մեր Թագաւորին. սաղմոս երգեցէք.
7 Վասն զի բոլոր երկրի վրայ Թագաւոր Աստուած է, երգ երգեցէք անոր։
8 Աստուած ազգերուն վրայ կը թագաւորէ, Աստուած կը նստի իր սուրբ աթոռին վրայ։
9 Ժողովրդոց իշխանները ժողվուեցան Աբրահամի Աստուծոյն ժողովուրդին հետ. վասն զի երկրի ասպարները Աստուծոյն են. ինքը խիստ բարձրացած է։

բ Օր. է. 21։ Նեեմ. ա. 5։ Սաղ. հզ. 12։ գ Մաղ. ա. 14։ դ Սաղ. ժը. 47։ ե Պետ. ա. 4։ զ Սաղ. կը. 24, 25։ է Զաք. ժդ. 9։ ը Կոր. ժդ. 15, 16։ թ Մն. ժզ. 31։ Սաղ. ղդ. 1։ ղզ. 10։ ղէ. 1։ ղթ. 1։ Յայտ. ժթ. 6։ ժ Հռով. դ. 11, 12։ ի Սաղ. ձթ. 18։

## ՍԱՂՄ. ԽԸ

1—14 Եկեղեցիին վայելչութիւնը ու արտօնութիւնները։

Կորխի որդւոցը երգը ու Սաղմոսը։

1 Տէրը մեծ է ու խիստ օրհնեալ է մեր Աստուծոյն քաղաքին մէջը՝ իր սուրբ լեռանը վրայ։
2 Գեղեցիկ բարձրութիւնով՝ բոլոր երկրի ուրախութիւնը՝ հիւսիսային կողմերը եղող Սիոն լեռն է, մեծ Թագաւորին քաղաքը։
3 Աստուած անոր պալատներուն մէջը ապաւէն գիտցուած է։
4 Վասն զի ահա թագաւորները ժողվուեցան, ու մէկտեղ անցան։
5 Անոնք տեսածնուն պէս՝ զարմացան. զարհուրեցան, ու շուտով փախան։
6 Հոն դողում մը բռնեց զանոնք, ու ցաւը՝ զաւակ ծնանողի ցաւի պէս։
7 Արեւելեան հովով Թարսիսի նաւերը կը խորտակես։
8 Ինչպէս որ լսեցինք, անանկ ալ տեսանք զօրութեանց Տէրոջը քաղաքին մէջ, մեր Աստուծոյն քաղաքին մէջը. Աստուած անիկայ պիտի հաստատէ յաւիտեան։ (Սէլա։)
9 Ո՛վ Աստուած՝ քու ողորմութեանդ վրայ կը մտածենք քու տաճարիդ մէջը։
10 Քու գովութիւնդ՝ ո՛վ Աստուած, քու անուանդ պէս մինչև երկրին

ա Սաղ. խզ. 4։ ձէ. 3։ բ Ես. ր. 2, 3։ Միք. դ. 1։ Զաք. ը. 3։ գ Սաղ. ծ. 2։ Երեմ. գ. 19։ Ողբ. բ. 15։ Դան. բ. 9։ ժա. 16։ դ Եզեկ. ի. 6։ ե Ես. ժդ. 13։ զ Մատ. ե. 35։ է Թագ. ժ. 6, 14, 16, 18, 19։ ը Ել. ժե. 15։ թ Ովս. ժգ. 13։ ժ Երեմ. ժը. 17։ ի Եզեկ. իէ. 25, 26։ լ Հմր 1, 2։ խ Ես. բ. 2։ Միք. դ. 1։ ծ Սաղ. իզ. 3։ խ. 10։ կ Օր. իր. 58։ Յես. է. 9։ Սաղ. ճժդ. 3։ Մաղ. ա. 11, 14։

ծայրերն է . արդարութիւնով լեցուն է քու աջ ձեռքդ ։

11 Սիօն լեռը թող ուրախանայ, ու Յուդայի աղջիկները թող ցնծան քու դատաստաններուդ համար ։

12 Սիօնին չորս կողմը պտըտեցէք, ու անոր բոլորտիքը շրջեցէք, ու աշտարակները համրեցէք .

13 Ուշադրութեամբ դիտեցէք անոր պարիսպները . անոր պալատները զննեցէք, որ գալու ազգին պատմէք ։

14 Վասն զի աս Աստուածը մեր Աստուածն է յաւիտեանս յաւիտենից . անիկայ պիտի առաջնորդէ մեզ մինչև 'ի մահ ։

## ՍԱՂՄ . ԽԹ

1 Յորդորանք մը՝ որ մարդիկ իրենց յոյսը Աստուծոյ վրայ հաստատեն, և չէ թէ աշխարհային մեծութեան վրայ ։ 16 Աշխարհային յաջողութիւններուն վրայ զարմանալ պէտք չէ ։

Գլխաւոր երգեցողին . Կորխի որդւոցը Սաղմոսը ։

1 Լսեցէք ասիկայ՝ ով բոլոր ազգեր, ականջ դրէք աշխարհի բոլոր բնակիչներ .

2 Ռամիկներ ու ազնուականներ, հարուստներ ու աղքատներ մէկտեղ ։

3 Բերանս իմաստութիւն պիտի խօսի, ու սրտիս խորհուրդները հանճար ։

4 Իմ ականջս առակի պիտի ծռեմ . խրթնաբանութիւնս քնարով պիտի բանամ ։

5 Ինչո՞ւ վախնամ չար օրերուն մէջ երբոր դարանակալներուն անօրէնութիւնը չորս կողմս կը պատէ ։

6 Իրենց զօրութեանը յուսացողներուն ու իրենց հարստութեանը շատութիւնովը պարծողներուն

7 Մէկը բնաւ չկրնար փրկել իր եղբայրը, ոչ ալ անոր փրկանքը Աստուծոյ հատուցանել .

8 (Քանզի սուղ է անոնց անձին փրկութեան գինը . ու յաւիտեան պիտի դադարի .)

9 Որ ապրի յաւիտեան, ու ապականութիւն չտեսնէ ։

10 Ինչու որ կը տեսնէ թէ իմաստունները կը մեռնին, յիմարը ու անխելքը մէկտեղ կը կորսուին ու իրենց ստացուածքները ուրիշներուն կը թողուն ։

11 Անոնց խորհուրդը աս է, թէ իրենց տուները յաւիտեան պիտի մնան . ու իրենց բնակարանները ազգէ մինչև ազգ . երկիրները իրենց անուններովը կը կոչեն ։

12 Բայց մարդը պատուոյ մէջ չմնար, անասուններուն նման է որ կը կորսուին ։

13 Անոնց աս ճամբան իրենց յիմարութիւն է . սակայն անոնց ետևէն եկողները անոնց խօսքին հաճութիւն պիտի տան ։ (Սելա ։)

14 Անոնք ոչխարներու պէս գերեզմանը կը դրուին . մահը պիտի հովուէ զանոնք . և ուղիղները անոնց վրայ պիտի տիրեն առտուանց . ու անոնց դէմքը՝ գերեզմանը պիտի մաշեցընէ իրենց բնակարանէն ։

15 Սակայն Աստուած գերեզմանին ձեռքէն պիտի փրկէ իմ անձս, ինչու որ զիս պիտի ընդունի ։ (Սելա ։)

16 Մի վախնար երբոր մարդ մը հարստանայ, ու անոր տանը փառքը շատնայ ։

17 Վասն զի մեռնելու ատենը ամենևին բան մը իր հետը պիտի չտանի, ու իր փառքը իր ետևէն պիտի չիջնէ ։

18 Թէպէտև իր անձը օրհնեց իր կենդանութեանը ատենը, (ու քեզ կը գովեն երբոր դուն քու անձիդ աղէկութիւն կ'ընես ։)

19 Սակայն իր նախնիքներուն ազգին պիտի երթայ . մինչև յաւիտեան լոյս պիտի չտեսնեն ։

20 Մարդը որ պատուոյ մէջ է, ու իմաստութիւն չունի, անասուններուն կը նմանի որ կը կորսուին ։

## ՍԱՂՄ . Ծ

1 Աստուծոյ վեհափառութիւնը իր ժողովուրդին մէջ ։ 5 Անոր հրամանը սուրբերը ժողվելու համար ։ 7 Աստուած արարողութիւններուն չհաճիր, 14 հապա անկեղծ հնազանդութեան ։

Սաղմոս Ասափայ ։

1 Աստուածներուն Աստուածը՝ Տէրը խօսեցաւ, ու երկիրը կանչեց արևելքէն մինչև արևմուտք ։

2 Սիօնէն՝ գեղեցկութեան կատարելութենէն Աստուած փայլեցաւ ։

3 Մեր Աստուածը պիտի գայ, ու պիտի չլռէ . անոր առջին մաշող կրակ, ու բոլորտիքը սաստիկ փոթորիկ պիտի ըլլայ ։

4 Երկինքը պիտի կանչէ վերէն, ու երկիրը՝ իր ժողովուրդը դատելու համար .

5 Ինծի ժողվեցէք իմ սուրբերս, որ ինծի հետ զոհով ուխտ ընողները ։

6 Ու երկինքները անոր արդարութիւնը պիտի պատմեն, վասն զի Աստուած ինքը դատաւոր է ։ (Սելա ։)

7 Լսէ՛ ով իմ ժողովուրդս, ու

խօսիմ․ ով Իսրայէլ, ու քեզի վկայութիւն ընեմ, որ ես եմ Աստուած՝ քու Աստուածդ։
8 Չէ թէ քու զոհերուդ համար քեզ կը յանդիմանեմ, ու քու ողջակէզներուդ համար՝ որոնք միշտ իմ առջիս են։
9 Քու տունէդ զուարակ չեմ առներ, ո՛չ ալ քու գոմերէդ նոխազներ։
10 Ինչու որ իմս է անտառին բոլոր գազանները, հազարաւոր լեռներուն անասունները։
11 Ես գիտեմ լեռներուն բոլոր թռչունները, ու դաշտի գազանները իմ քովս են։
12 Թէ որ անօթենամ՝ քեզի պիտի չըսեմ. վասն զի աշխարհքը ու անոր լիութիւնը իմս է։
13 Միթէ ես ցուլերու միս կ'ուտե՞մ, կամ նոխազներու արիւն կը խմե՞մ։
14 Շնորհակալութիւն զոհէ Աստուծոյ, ու քու ուխտերդ կատարէ Բարձրելոյն.
15 Ու նեղութեան օրը ինծի կանչէ. ես քեզ պիտի ազատեմ, ու դուն զիս պիտի փառաւորես։
16 Սակայն Աստուած՝ ամբարշտին կ'ըսէ. Քեզի ի՞նչ՝ որ դուն իմ օրէնքներս կը պատմես, ու իմ ուխտս բերանդ կ'առնես։
17 Վասն զի դուն խրատը ատեցիր, ու իմ խօսքերս ետիդ ձգեցիր.
18 Գողը տեսնելով՝ անոր հետ միաբանեցար, ու շնացողներուն հետ բաժին ունեցար.
19 Քու բերանդ չարութեան տուիր, ու քու լեզուդ նենգութիւն կը հիւսէ.
20 Կը նստիս եղբօրդ դէմ կը խօսիս, մօրդ որդւոյն դէմ չարախօսութիւն կ'ընես։
21 Ասոնք ըրիր ու ես լռեցի, կարծեցիր թէ ես բոլորովին քեզի կը նմանիմ. բայց քեզ պիտի յանդիմանեմ, ու աչքերուդ առջեւ պիտի շարեմ ըրածդ։
22 Արդ իմացէք ասիկայ՝ ո՛վ դուք Աստուած մոռցողներ, չըլլայ որ ձեզ պատառեմ, եւ ազատող մըն ալ չգտնուի։
23 Շնորհակալութիւն մատուցանողը զիս կը փառաւորէ. ու իր ճամբուն զգուշացողին պիտի ցուցնեմ Աստուծոյ փրկութիւնը։

## ՍԱՂՄ․ ԾԱ

1 Դաւիթ խոնարհութեամբ իր մեղքերը խոստովանելով անոնց համար թողութիւն կը խնդրէ․ 6 սրբութեան համար աղօթք կ'ընէ․ 16 Աստուած զոհերու չհաճիր՝ հոգւոյ անկեղծութեան․ 18 Դաւիթ եկեղեցիին համար կ'աղօթէ․

Գլխաւոր երգեցողին. Սաղմոս Դաւթի, այն ժամանակը՝ որ Նաթան մարգարէն անոր եկաւ. Բերսաբէին քովը մտնելէն ետքը։

1 Ողորմէ ինծի ով Աստուած՝ քու ողորմութեանդ համեմատ, քու առատ գթութեանդ համեմատ ջնջէ իմ յանցանքներս։
2 Իմ անօրէնութենէս բոլորովին զիս լուա, ու իմ մեղքէս զիս սրբէ։
3 Վասն զի ես կը ճանչնամ իմ յանցանքներս, ու իմ մեղքս միշտ իմ առջեւս է։
4 Քեզի՝ միայն քեզի դէմ մեղանչեցի, եւ քու աչքերուդ առջեւ չարութիւն ըրի. որ արդար ըլլաս խօսքերուդ մէջ, ու անարատ ըլլաս դատաստանիդ մէջ։
5 Ահա ես անօրէնութիւնով ծնայ, ու իմ մայրս մեղքով յղացաւ զիս։
6 Ահա դուն ճշմարտութիւն կ'ուզես երիկամունքներու մէջ. ու ծածուկ տեղը իմաստութիւն պիտի գիտցնես ինծի։
7 Զոպայի մշտիկով մաքրէ զիս, ու մաքուր ըլլամ. լուա զիս, ու ձիւնէն աւելի ճերմակ ըլլամ։
8 Ցնծութիւն եւ ուրախութիւն լսել տուր ինծի. թող ցնծան ոսկորները որ կոտրեցիր։
9 Իմ մեղքերէս երեսդ ծածկէ, ու բոլոր անօրէնութիւններս ջնջէ։
10 Ո՛վ Աստուած՝ իմ մէջս մաքուր սիրտ ստեղծէ, եւ իմ ներսիդիս ուղիղ հոգի նորոգէ։
11 Քու երեսէդ մի՛ ձգեր, ու քու Սուրբ Հոգիդ ինծմէ մի՛ հաներ։
12 Քու փրկութեանդ ցնծութիւնը ինծի ետ դարձուր, ու կամաւոր հոգի մը թող հաստատէ զիս։
13 Ամբարիշտներուն պիտի սորվեցնեմ քու ճամբաներդ, ու մեղաւորները քեզի պիտի դառնան։
14 Ո՛վ Աստուած՝ իմ փրկութեանս Աստուածը, փրկէ զիս արիւնհեղութենէն. լեզուս ցնծութեամբ պիտի խօսի քու արդարութեանդ վրայով։
15 Ո՛վ Տէր՝ իմ շրթունքներս բաց, ու բերանս պիտի պատմէ քու գովութիւնդ։
16 Վասն զի զոհի չես հաճիր որ անիկայ մատուցանեի. դուն ողջակէզի ալ չես հաւնիր։
17 Աստուծոյ զոհը կոտրած հոգին է. կոտրած ու խոնարհ սիրտը ով Աստուած՝ դուն չես անարգեր։
18 Քու բարեսիրութեամբդ Սիօնին բարիք ըրէ. Երուսաղէմին պարիսպները շինէ։

ա Սաղ. դ. 5։ Մաղ. գ. 3։

19 Ան ատենը պիտի հաճիս արդարութեան զոհերուն՝ ողջակէզներուն ու բոլորովին այրուած զոհերուն. ան ատենը քու սեղանիդ վրայ զուարակներ պիտի մատուցանեն։

## ՍԱՂՄ · ԾԲ

1 Դաւիթ Դովեկին չարութիւնը դատապարտելով՝ անոր կործանումը կը գուշակէ ։ 6 որուն վրայ արդարը պիտի ուրախանայ ։ 8 Դաւիթ՝ Աստուծոյ վրայ ունեցած վստահութեամբը շնորհակալութիւն կը մատուցանէ ։

Գլխաւոր երգեցողին. Դաւիթին երգը, երբոր ա Դովէկ Եդովմայեցին եկաւ ու բ զրուցեց Սաւուղին, ու անոր ըսաւ թէ՝ Դաւիթ Աքիմելէքին տունը մտեր է։

ա Թագ. իբ. 9։ բ Եզեկ. իբ. 9։

1 Ինչո՞ւ անօրէնութիւնով կը պարծիս՝ ո՛վ բռնաւոր. Աստուծոյ գթութիւնը ամէն օր կայ։

2 գ Լեզուդ չարութիւններ կը հնարէ, դ սուր ածելիի պէս նենգութիւն կը գործէ.

գ Սաղ. ծ. 19։ դ Սաղ. ծէ. 4։ ծԹ. 7։ կդ. 3։ ե Երեմ. Թ. 4, 5։

3 Չարութիւնը բարութենէն աւելի կը սիրես, ե ստութիւնը արդարութիւն խօսելէն աւելի։ (Սէլայ։)

4 Ամէն կործանման խօսքերը, նենգաւոր լեզուն կը սիրես։

5 Աստուած ալ յաւիտեան քեզ պիտի կործանէ, քեզ պիտի բռնէ ու քեզ հանէ բնակարանէդ, ու զ քեզ արմատէդ պիտի խլէ կենդանեաց երկրէն։ (Սէլայ։)

զ Առակ. բ. 22։

6 է Արդարները պիտի տեսնեն ու վախնան, ու ը անոր վրայ պիտի ծիծաղին՝ ըսելով.

է Յոբ. իբ. 19։ Սաղ. լէ. 34։ խ. 3։ կդ. 9։ Մաղ. ա. 5։

7 Ահա ան մարդը՝ որ զԱստուած իրեն ամրութիւն չըրաւ, հապա թ իր շատ հարստութեանը վստահացաւ, իր անօրէնութիւնովը զօրացաւ։

ը Սաղ. ծը. 10։ թ Սաղ. խԹ. 6։

8 Սակայն ես Աստուծոյ տանը մէջ ժ կանանչ ձիթենիի պէս եմ. Աստուծոյ ողորմութեանը կը յուսամ յաւիտեանս յաւիտենից։

ժ Երեմ. ժա. 16։ Ովս. ժդ. 6։

9 Քեզ պիտի գովեմ յաւիտեան, որ ասիկա կատարեցիր. ու քու անուանդ պիտի յուսամ, ի վասն զի բարի է սուրբերուդ առջին։

ի Սաղ. ծդ. 6։

## ՍԱՂՄ · ԾԳ

1 Դաւիթ մարմնաւոր մարդուն ապականութիւնը կը ստորագրէ. 4 չարերը կը յանդիմանէ անոնց խղճմտանքին լուսովը. 6 Աստուծոյ փրկութեամբը կը պարծի ։

Գլխաւոր երգեցողին, Մահալաթին վրայ. Դաւիթին երգը։

1 ա Անզգամը իր սրտին մէջ ըսաւ թէ՝ Աստուած չկայ. ապականեցան ու պիղծ անօրէնութիւն ըրին. բ մէկ մը չկայ՝ որ աղէկութիւն ընէ։

ա Սաղ. ժ. 4։ ժդ. 1, &c։ բ Հռով. գ. 10։

2 Աստուած գ երկինքէն նայեցաւ մարդոց որդիներուն վրայ, որ տեսնէ թէ՝ կա՞յ արդեօք իմաստուն մէկը որ դ զԱստուած փնտռէ։

գ Սաղ. լգ. 13։ դ բՄն. ժե. 2։ ժԹ. 3։

3 Ամէնքը խոտորեցան, մէկտեղ անպիտան եղան. աղէկութիւն ընող մը չկայ, մէկ մըն ալ չկայ։

4 Միթէ ե չե՞ն ճանչնար անօրէնութիւն ընողները, որոնք հաց ուտելու պէս՝ իմ ժողովուրդս կ՚ուտեն, ու Աստուծոյ չեն կանչեր։

ե Երեմ. դ. 22։

5 զ Անոնք ան տեղը շատ վախցան՝ ուր որ վախ չկար. վասն զի քեզ պաշարողներուն է ոսկորները ցրուեց Աստուած. ամչցուցիր զանոնք, վասն զի Աստուած անարգեց զանոնք։

զ Ղև. իզ. 17, 36։ Առակ. իը. 1։ է Եզեկ. զ. 5։

6 ը Երանի թէ Սիօնէն գար Իսրայէլին փրկութիւնը. Աստուած իր ժողովուրդը գերութենէն դարձուցած ատենը, Յակոբը պիտի ցնծայ, ու Իսրայէլը ուրախ պիտի ըլլայ։

ը Սաղ. ժդ. 7։

## ՍԱՂՄ · ԾԴ

1 Դաւիթ Զիփացիներէն գանգատելով՝ իր փրկութեանը համար աղօթք կ՚ընէ ։ 4 Աստուծոյ օգնականութեանը վրայ վստահանալով՝ ողջակէզներ մատուցանել կը խոստանայ ։

Գլխաւոր երգեցողին, Նկինօթի վրայ. Դաւիթին երգը, ան ատենը որ ա Զիփացիք եկան ու ըսին Սաւուղին. Ահա Դաւիթ մեր քովը պահուած է։

ա Թագ. իգ. 19։ իզ. 1։

1 Ո՛վ Աստուած՝ քու անունովդ զիս ազատէ՛, ու քու զօրութիւնովդ իրաւունք ըրէ ինծի։

2 Ո՛վ Աստուած՝ լսէ՛ իմ աղօթքս, բերնիս խօսքերուն ականջ դիր.

3 Վասն զի բ օտարները իմ վրաս ելան, ու բռնաւորները կը փնտռեն իմ անձս. զԱստուած իրենց առջևը չդրին։ (Սէլայ։)

բ Սաղ. ձզ. 14։

4 Ահա Աստուած ինծի օգնական է. գ Տէրը իմ հոգիիս պաշտպաններուն հետն է։

գ Սաղ. ճժը. 7։

5 Չարութիւնը թշնամիներուս վրայ պիտի դարձընէ. դ քու ճշմարտութեամբդ կորսընցո՛ւր զանոնք։

դ Սաղ. հԹ. 49։

6 Ես իմ կամքովս քեզի զոհ պիտի մատուցանեմ. ո՛վ Տէր՝ քու անունդ պիտի գովեմ. ե վասն զի բարի է։

ե Սաղ. ծբ. 9։

7 Վասն զի ամէն նեղութենէ զիս փրկեց, ու զ իմ աչքս թշնամիներուս վրայ տեսաւ։

զ Սաղ. ծԹ. 10։ ղբ. 11։

## ՍԱՂՄ · ԾԵ

1 Դաւիթ իր աղօթքին մէջ իր երկիւղալի վիճակին համար կը գանգատի ։ 9 Իր թշնամիներուն դէմ կ՚աղօթէ, ու անոնց չարութեանը ու նենգութեանը համար կը գանգատի ։ 16 Ինքզինքը կը մխիթարէ՝ յուսալով որ Աս-

*տուած զինքը պիտի պահպանէ, ու իր թշնամիները ամօթով պիտի ընէ ։*

Գլխաւոր երգեցողին, Նկինօթի վրայ. Դաւիթին երգը ։

1 Ո՜վ Աստուած՝ ականջ դիր իմ աղօթքիս, ու իմ խնդրուածքէս քու երեսդ մի՛ ծածկեր ։
2 Մտիկ ըրէ ու պատասխանէ՛ ինծի. ա իմ գանգատովս բ կը մոլորիմ ու կը խռովիմ,
3 Թշնամիին ձայնէն ու ամբարշտին նեղութիւն տալէն. գ ինչու որ իմ վրաս անիրաւութիւն կը բերեն, ու բարկութիւնով զիս կը հալածեն ։
4 դ Սիրտս դողաց իմ ներսիդիս, ու մահուան արհաւիրքները իմ վրաս ինկան ։
5 Վախ ու դող եկաւ իմ վրաս, ու սոսկումը զիս ծածկեց ։
6 Ու ըսի. Երանի՜ թէ աղաւնիի նման թեւեր ունենայի, որ թռչէի ու հանգիստ ըլլայի ։
7 Ահա՛ հեռուն կը փախչէի, անապատին մէջ կը բնակէի ։ (Սէլա ։)
8 Սաստիկ հովէն ու փոթորիկէն իմ փախչիլս կ'արտորցընէի ։
9 Ո՛վ Տէր՝ կորսնցուր, անոնց լեզուները բաժնէ. վասն զի քաղաքին մէջը ե բռնութիւն ու կռիւ տեսայ ։
10 Ցորեկ ու գիշեր անոր չորս կողմը՝ անոր պարիսպներուն վրայ կը պըտըտին. անօրէնութիւն ու չարիք կայ անոր մէջը ։
11 Անոր մէջը եղեռնագործութիւն կայ. և բռնութիւնը ու նենգութիւնը անոր հրապարակներէն չեն զատուիր ։
12 Ինչու որ թշնամին չէր զիս նախատողը, որ համբերէի. կամ ատողը չէր զ իմ վրաս հպարտացողը, որ անկէ պահուէի.
13 Հապա դուն ո՛վ մարդ՝ իմ հաւասարս, է իմ ընկերս ու ճանչւորս,
14 Որ իրարու հետ անոյշ խօսակցութիւն կ'ընէինք, ու ը բազմութեան հետ Աստուծոյ տունը կ'երթայինք ։
15 Մահը յանկարծ անոնց վրայ պիտի հասնի, ու թ ողջ ողջ գերեզմանը պիտի իջնեն. վասն զի իրենց բնակարաններուն ու իրենց մէջը չարութիւն կայ ։
16 Իսկ ես Աստուծոյ պիտի կանչեմ, ու Տէրը զիս պիտի փրկէ ։
17 ժ Իրիկունը՝ առտուն ու կէս օրը պիտի բողոքեմ ու հառաչեմ, և անիկայ պիտի լսէ իմ ձայնս ։
18 Խաղաղութիւնով կը փրկէ իմ անձս ինծի դէմ եղած պատերազմէն. ինչու որ ի շատերը կան իմ քովս ։

ա Եսա. ԼԸ. 14 ։
բ Կամ՝ կը տրտմիմ
գ բ Թագ. ԺԶ. 7, 8 ։
դ Սաղ. ՃԺԶ. 3 ։
ե Երեմ. Զ. 7 ։
ե Սաղ. ԽԱ. 9 ։
զ Սաղ. ԼԵ. 26 ։ ԼԸ. 16 ։
է բ Թագ. ԺԵ. 12 ։ ԺԶ. 23 ։ Սաղ. ԽԱ. 9 ։ Երեմ. Թ. 4 ։
ը Սաղ. ԽԲ. 4 ։
թ Թուոց ԺԶ. 30 ։
ժ Դան. Զ. 10 ։ Ղուկ. ԺԲ. 1 ։ Գործ. Գ. 1 ։ Ժ. 3, 9, 30 ։ ա Թես. Ե. 17 ։
ի բ Մն. ԼԲ. 7, 8 ։

19 Աստուած պիտի լսէ, ու յաւիտենականութեան մէջ բնակողը պիտի ցածցընէ զանոնք. (Սէլա.) որովհետեւ չեն փոխուիր անոնք, ու Աստուծմէ չեն վախնար ։
20 ի Ձեռքը ծ իրեն հետ հաշտուածներուն վրայ երկընցուց. իր ուխտը աւրեց ։
21 կ Անոր բերնին խօսքերը կոզիէն կակուղ են, բայց անոր սրտին մէջը պատերազմ կայ. անոր խօսքերը ձէթէն կակուղ են, բայց մերկ սուրեր են ։
22 հ Քու հոգդ Տէրոջը վրայ ձգէ, ու ան քեզ պիտի խնամէ. ձ անիկայ յաւիտեան սասանութիւն չտար արդարին ։
23 Բայց դուն ո՛վ Աստուած՝ անոնք ապականութեան գուբին մէջը պիտի իջեցընես. ղ արիւնահեղ ու նենգաւոր մարդիկը ճ օրերնուն կէսին պիտի չհասնին. սակայն ես քեզի պիտի յուսամ ։

լ բ Օր. ԼԳ. 27 ։
ի Գործ. ԺԲ. 1 ։
ծ Սաղ. Է. 4 ։
կ Սաղ. ԻԸ. 3 ։ ԾԷ. 4 ։ ԿԲ. 4 ։ ԿԴ. 3 ։ Առակ. Ե. 3, 4 ։ ԺԲ. 18 ։
հ Սաղ. ԼԷ. 5 ։ Մատ. Զ. 25 ։ Ղուկ. ԺԲ. 22 ։ ա Պետ. Ե. 7 ։
ձ Սաղ. ԼԷ. 24 ։
ղ Սաղ. Ե. 6 ։
ճ Յոբ. ԺԵ. 32 ։ Առակ. Ժ. 27 ։ Ժող. Է. 17 ։

## ՍԱՂՄ. ԾԶ

*1 Դաւիթ՝ Աստուծոյ խօսքին վրայ վստահանալով՝ իր աղօթքին մէջ իր թշնամիներուն համար կը գանգատի ։ 9 Կը խոստովանի թէ իր յոյսը Աստուծոյ խօսքին վրայ է, ու կը խոստանայ որ զանիկայ գովէ ։*

Գլխաւոր երգեցողին, Յօնաթ էլէմ րեհօգիմին վրայ. Դաւիթին երգը, երբոր Փղշտացիք ա Գէթի մէջ բռնեցին զանիկայ ։

1 Ո՛վ Աստուած՝ բ ողորմէ՛ ինծի, վասն զի մարդը կ'ուզէ զիս կլլել. ամէն օր պատերազմ ընելով՝ զիս կը նեղէ ։
2 Թշնամիներս ամէն օր գ կ'ուզեն զիս կլլել. վասն զի շատ մարդիկ դ ամբարտաւանութիւնով ինծի հետ կը մարտնչին ։
3 Վախցած օրս քեզի պիտի յուսամ ։
4 ե Աստուծով պիտի գովեմ իր խօսքը. Աստուծոյ կը յուսամ, զ պիտի չվախնամ. մարմինը ինծի ի՞նչ կրնայ ընել ։
5 Ամէն օր իմ է բաներուս վնաս կուտան. իմ վրայովս անոնց բոլոր խորհուրդները չարիքի համար են ։
6 ը Կը ժողվուին ու կը պահուին. իմ շաւիղներս կը դիտեն. վասն զի ը իմ անձիս կը սպասեն ։
7 Միթէ անօրէնութիւնով անոնց փրկութիւն կ'ըլլա՞յ. բարկութիւնով ժողովուրդները վա՛ր ձգէ, ո՛վ Աստուած ։
8 Իմ թափառական պտըտիլս համրեցիր. արցունքներս քու տիկիդ մէջը դիր. ժ միթէ անոնք քու գրքիդ մէջը գրուած չե՞ն ։
9 Քեզի կանչած օրս ետ պիտի

ա ա Թագ. ԻԱ. 11 ։
բ Սաղ. ԾԷ. 1 ։
գ Սաղ. ԾԷ. 3 ։
դ Կամ՝ բարձրէն, կամ՝ ո՛վ Բարձրեալ
ե Հմր 10, 11 ։
զ Սաղ. ՃԺԸ. 6 ։ Եսա. ԼԱ. 3 ։ Եբր. ԺԳ. 6 ։
է Կամ՝ խօսքերս կը ծռեն.
ը Սաղ. ԾԹ. 3 ։ ՃԽ. 2 ։
ը Սաղ. ՀԱ. 10 ։
ժ Մաղ. Գ. 16 ։

դառնան իմ թշնամիներս . ասիկայ գիտեմ , ինչու որ Աստուած ինծի հետ է :
10 Աստուծով պիտի գովեմ իր խօսքը , Տէրոջմով պիտի գովեմ իր խօսքը :
11 Աստուծոյ կը յուսամ , պիտի չվախնամ . մարդը ինծի ի՞նչ կրնայ ընել :
12 Ով Աստուած՝ քու ուխտերդ իմ վրաս են . քեզի շնորհակալութիւններ պիտի հատուցանեմ ։
13 Որովհետեւ իմ անձս մահուանէ ազատեցիր , ոտքերս ալ գայթակղելէն չէ՞ս ազատեր , որ Աստուծոյ առջեւը քալեմ կենդանիներուն լոյսին մէջը ։

## ՍԱՂՄ . ԾԷ

1 Դաւիթ աղօթքի մէջ Աստուծոյ դիմելով իր վտանգաւոր վիճակին համար կը գանգատի ։ 7 Իր գովութիւնը կը քաջալերէ որ զԱստուած գովէ ։

Գլխաւոր երգեցողին . Ալթաշհէթ , Դաւիթին երգը . Սաւուղին երեսէն դէպ ՚ի քարայրը փախած ատենը ։

1 Ողորմէ ինծի՝ ով Աստուած , ողորմէ ինծի , վասն զի իմ անձս քեզի կը յուսայ . ու քու թեւերուդ հովանաւորութեանը պիտի ապաւինիմ , մինչեւ որ թշուառութիւնները անցնին ։
2 Բարձրեալ Աստուծոյն պիտի աղաղակեմ , ինծի համար գործող Աստուծոյն ։
3 Երկինքէն պիտի խրկէ ու փրկէ զիս , զիս կլլել ուզողը նախատէ . (Սէլայ .) Աստուած պիտի խրկէ իր ողորմութիւնը ու ճշմարտութիւնը ։
4 Իմ անձս առիւծներու մէջ է . բոց փչող մարդոց որդիներուն մէջ կը պառկիմ , որոնց ակռաները նիզակներ ու նետեր են , եւ անոնց լեզուները սրած թուրեր են ։
5 Ով Աստուած՝ երկնից վրայ բարձրացիր . քու փառքդ բոլոր երկրի վրայ ըլլայ ։
6 Իմ քայլերուս որոգայթ պատրաստեցին . անձս վար ծռեցաւ . փոս փորեցին առջեւս , ու իրենք իյնան անոր մէջը ։ (Սէլայ ։)
7 Սիրտս պատրաստ է՝ ով Աստուած , սիրտս պատրաստ է . պիտի երգեմ ու սաղմոս պիտի ըսեմ ։
8 Արթնցիր փառքս իմ . արթնցիր ով տաւիղ ու քնար . ես կանուխ պիտի արթըննամ ։
9 Ով Տէր՝ ժողովուրդներուն մէջ քեզ պիտի գովեմ . ազգերուն մէջ քեզի սաղմոս պիտի երգեմ ։
10 Վասն զի մեծ է քու ողորմութիւնդ մինչեւ երկինքը , ու քու ճշմարտութիւնդ մինչեւ ամպերը ։
11 Երկնից վրայ բարձրացիր՝ ով Աստուած , քու փառքդ բոլոր երկրի վրայ ըլլայ ։

## ՍԱՂՄ . ԾԸ

1 Դաւիթ կը յանդիմանէ անիրաւ դատաւորները . 3 չարերուն բնութիւնը կը ստորագրէ . 6 գանոնք Աստուծոյ դատաստանին կը յանձնէ . 10 որուն վրայ արդարը պիտի ուրախանայ ։

Գլխաւոր երգեցողին . Ալթաշհէթ , Դաւիթին երգը ։

1 Իրաւցնէ անբարբառ արդարութի՞ւն կը խօսիք . ուղղութեամբ դատաստա՞ն կը տեսնէք , ով մարդոց որդիներ ։
2 Ցիրաւի սրտով անօրէնութիւններ կը գործէք . երկրի վրայ ձեռքերնուդ բռնութիւնը կը կշռէք ։
3 Ամբարիշտները երբոր մօրը արգանդէն խոտորեցան . որովայնէն կը մոլորին՝ սուտ խօսելով ։
4 Անոնց թոյնը օձի թոյնի պէս է , խուլ իժի պէս՝ որ կը գոցէ իր ականջները ,
5 Որ չլսեր թովիչներուն ձայնը , թէեւ վարպետութեամբ կախարդութիւն կ՚ընեն ։
6 Ով Աստուած՝ անոնց ակռաները իրենց բերաններուն մէջը փշրէ . ով Տէր՝ առիւծի կորիւններուն ժանիքները կոտրէ ։
7 Թող անոնք հալին ջուրերու պէս՝ որ կը վազեն . երբոր իրենց աղեղները կը լարեն , թող կոտրտին .
8 Խխունջի պէս՝ որ քալած ատենը կը հալի . կնկան մը վիժած զաւակին պէս արեւը չտեսնեն ։
9 Ձեր կաթսաները փուշերուն կրակը զգալէն առաջ , թէ թարմ եւ թէ այրուող փուշերը մրրիկով պիտի ցրուէ ։
10 Արդարը պիտի ուրախանայ , երբոր վրէժխնդրութիւնը տեսնէ . իր ոտքերը ամբարշտին արեանը մէջ պիտի լուայ ։
11 Ու մարդը պիտի ըսէ թէ՝ Իրաւցնէ արդարին համար վարձք կայ . իրաւցնէ Աստուած կայ , որ երկրի վրայ դատաւոր է ։

## ՍԱՂՄ . ԾԹ

1 Դաւիթ իր թշնամիներէն ազատ մնալու համար աղօթք կ՚ընէ . 6 անոնց անգթութեանը համար կը գանգատի . 8 Աստուծոյ կ՚ապաւինի . 11 անոնց դէմ կ՚աղօթէ . 16 զԱստուած կը գովաբանէ ։

Գլխաւոր երգեցողին . Ալթաշհէթ . Դաւիթին երգը . Այն ատենը՝ որ Սաւուղ մարդիկ խրկեց , ու տունը պաշարեցին որ մեռցընեն զանիկայ ։

1 Թշնամիներէս զիս փրկէ ով իմ
Աստուածս. իմ վրաս ելլող-
ներէն զիս վեր վերցուր։
2 Անօրէնութիւն գործողներէն զիս
ազատէ, ու արիւնահեղ մարդիկ-
ներէն զիս փրկէ։
3 Ինչու որ ահա իմ անձիս համար
դարանը մտան. զօրաւոր մարդիկ
իմ վրաս ժողվուեցան, ո՛չ թէ
մեղքիս ու յանցանքիս համար՝ ով
Տէր։
4 Մեղք չունեցած ատենս վա-
զեցին ու պատրաստուեցան. արթ-
նցիր զիս դիմաւորելու, ու նայէ։
5 Ով Տէր Աստուած զօրութեանց՝
Աստուած Իսրայէլի, արթնցիր
բոլոր հեթանոսները քննելու. չար
անօրէններուն բնաւ մի՛ ողորմիր։
(Սէլա։)
6 Անոնք իրիկուան ետ կը դառ-
նան, շան պէս կ'ոռնան, ու քա-
ղաքին չորս կողմը կը պտըտին։
7 Ահա իրենց բերնէն չարութիւն
դուրս կը թափեն. անոնց շրթ-
թունքներուն վրայ սուրեր կան.
ինչու որ կ'ըսեն թէ՝ Ո՞վ պիտի լսէ։
8 Բայց դուն ով Տէր՝ անոնց վը-
րայ պիտի ծիծաղիս. բոլոր հեթա-
նոսները ծաղր պիտի ընես։
9 Ով իմ զօրութիւնս՝ քեզի
պիտի սպասեմ. վասն զի Աս-
տուած է իմ ապաւէնս։
10 Ողորմութեանս Աստուածը ինծի
պիտի հասնի. Աստուած պի-
տի ցուցընէ ինծի թշնամիներուս
կործանումը։
11 Մի՛ մեռցըներ անոնք, որ ժո-
ղովուրդս չմոռնայ. զանոնք ցիր-
ուցան ըրէ քու զօրութեամբդ,
ու վար ձգէ զանոնք ով Տէր՝ մեր
վահանը,
12 Անոնց իրենց բերաններուն
մեղքին ու շրթունքներուն խօսքին
համար՝ իրենց ամբարտաւանու-
թեանը մէջ թող բռնուին. նաև
անէծքին ու սուտին համար՝ որ կը
խօսին։
13 Կորսնցուր բարկութիւնով,
կորսնցուր զանոնք՝ որ չըլլան,
ու գիտնան թէ Աստուած կը
տիրէ Յակոբին վրայ մինչև երկրի
ծայրերը։ (Սէլա։)
14 Անոնք իրիկուան ետ պիտի
դառնան, շան պէս պիտի ոռնան,
ու քաղաքին չորս կողմը պտըտին.
15 Ուտելիքի համար պիտի թա-
փառին. թէ որ չկշտանան՝ պիտի
մռմռան։
16 Բայց ես քու զօրութիւնդ պիտի
երգեմ, ու առտուանց քու ողոր-
մութիւնովդ պիտի ցնծամ. վասն
զի դուն ինծի պահապան եղար, ու
ապաւէն՝ իմ նեղութեանս օրը
17 Ով իմ զօրութիւնս՝ քեզի
սաղմոս պիտի երգեմ. ինչու որ
իմ պաշտպանս Աստուած է՝ իմ
ողորմութեանս Աստուածը։

## ՍԱՂՄ. Կ

1 Դաւիթ առջի պարտութիւնը կը յիշատակէ. 4 Նորէ բարի յուսով մը պարտութեան համար կ'աղօթէ. 6 Աստուծոյ խոստումներովը գիւ-քը մխիթարելով անկէ օգնութիւն կը խնդրէ։

Գլխաւոր երգեցողին. Շուշան Է-տութի վրայ. Դաւիթին երգը, սորվեցընելու համար. Երբ անիկա որ պատերազմեցաւ Միջագետի Ա-րամին, ու Սուբայի Արամին հետ, ու Յովաբ ետ դառնալով՝ Եդով-մայեցիներէն՝ տասնըերկու հազար հոգի զարկաւ Աղի ձորին մէջ։

1 Ով Աստուած մեզ երես ձգե-
ցիր, մեզ ցրուեցիր ու բար-
կացար. մեզի դարձիր։
2 Երկիրը դողացուցիր, անիկայ
պատռեցիր. անոր փլած տե-
ղուանքը նորոգէ, ինչու որ կ'երե-
րայ։
3 Քու ժողովուրդիդ խստութիւն
ցուցուցիր, մեզի թմրութեան
գինի խմցուցիր։
4 Քեզմէ վախցողներուն դրօշակ
տուիր, ճշմարտութեան համար
վերցընելու. (Սէլա.)
5 Որ քու սիրելիներդ փրկուին.
աջ ձեռքովդ ազատէ, ու պա-
տասխան տուր մեզի։
6 Աստուած իր սրբութիւնովը
խօսեցաւ. ես պիտի ցնծամ,
Սիւքէմը պիտի բաժնեմ, ու
Սոկքոթի հովիտը պիտի չափեմ։
7 Իմս է Գաղաադը, ու իմս է
Մանասէն. Եփրեմը գլխուս զօ-
րութիւնն է. Յուդան իմ օրէնս-
դիրս է.
8 Մովաբը իմ լուացուելու ա-
մանս է. Եդովմի վրայ պիտի
ձգեմ իմ մուճակս. ով Փղշտա-
ցիք՝ ինծի համար ձայնով ցնծա-
ցէք։
9 Ո՞վ պիտի տանի զիս պարսպա-
ւոր քաղաքը. ո՞վ պիտի առաջ-
նորդէ ինծի մինչև Եդովմ։
10 Չէ՞ որ դուն՝ ով Աստուած, որ
երես ձգեցիր մեզ, ու մեր զօր-
քերուն հետը չելլար՝ ով Աստուած։
11 Նեղութեան մէջէն մեզի օգնու-
թիւն տուր, վասն զի փուճ է
մարդուն փրկութիւնը։
12 Աստուծով քաջութիւն պիտի
ընենք. ու ան պիտի կոխէ մեր
թշնամիները։

## ՍԱՂՄ. ԿԱ

1 Դաւիթ իր փորձառութենէն քաջալերուելով՝ Աստուծոյ կը դիմէ. 4 յաւիտեան անոր ծա-

տալիքը ուխտ կ'ընէ՝ անոր խոստմունքներուն համար ։

Գլխաւոր երգեցողին, Նէգինօթի վրայ. Սաղմոս Դաւթի։

1 Ո՛վ Աստուած՝ լսէ իմ աղաղակս, ու մտիկ ըրէ իմ աղօթքս ։
2 Երկրին ծայրէն քեզի պիտի կանչեմ, սրտիս մարելու ատենը. ինծմէ բարձր եղած վէմին առաջնորդէ ինծի ։
3 Ինչու որ դուն ինծի ապաւէն մը եղար, ամուր աշտարակ մը՝ թշնամիին երեսէն ։
4 Քու խորանիդ մէջը պիտի բնակիմ յաւիտեան. քու թեւերուդ հովանաւորութեանը տակը պիտի ապաւինիմ ։ (Սէլա՛ ։)
5 Ինչու որ դուն ով Աստուած՝ լսեցիր իմ ուխտերս. քու անունէդ վախցողներուն ժառանգութիւնը ինծի տուիր ։
6 Թագաւորին օրերուն վրայ օրեր պիտի աւելցնես. անոր տարիները իրրեւ ազգէ մինչեւ ազգ պիտի ըլլան ։
7 Անիկայ յաւիտեան Աստուծոյ առջին պիտի նստի. ողորմութիւն ու ճշմարտութիւն պատրաստէ որ զանիկայ պահպանեն ։
8 Այսպէս սաղմոս պիտի երգեմ քու անունիդ յաւիտեան, որ ամէն օր ուխտերս կատարեմ ։

## ՍԱՂՄ. ԿԲ

1 Դաւիթ իր յոյսը Աստուծոյ վրայ դնելով՝ իր թշնամիները յուսակտուր կ'ընէ. 5 նոյն յուսով բարեպաշտները կը քաջալերէ. 9 կը հաստատէ թէ՝ աշխարհի բաներուն վստահիլ պէտք չէ, 11 եւ թէ կարողութիւնը ու ողորմութիւնը Աստուծոյ կը վերաբերի ։

Գլխաւոր երգեցողին, Իդիթունին վրայ. Սաղմոս Դաւթի ։

1 Յիրաւի իմ անձս լուռ կը սպասէ Աստուծոյ, անկէ է իմ փրկութիւնս.
2 Յիրաւի ան է իմ վէմս ու փրկութիւնս. իմ ապաւէնս է, շատ պիտի չսասանիմ ։
3 Մինչեւ ե՞րբ մարդու վրայ կը յարձակիք. դուք ամէնքդ պիտի կոտորուիք. ծռած պատի ու խախտած ցանկի պէս պիտի ըլլաք ։
4 Արդարեւ իր պատիւէն ձգելու խորհուրդ կ'ընեն. ստութիւն կը սիրեն. իրենց բերնովը կ'օրհնեն, բայց իրենց սրտովը կ'անիծեն ։ (Սէլա՛ ։)
5 Ո՛վ իմ անձս՝ միայն Աստուծոյ սպասէ, վասն զի անկէ է իմ յոյսս ։
6 Յիրաւի ան է իմ վէմս ու փրկութիւնս. իմ ապաւէնս է, պիտի չսասանիմ ։
7 Աստուծմէ է իմ փրկութիւնս ու փառքս. իմ զօրութեանս վէմը ու իմ ապաւէնս Աստուած է ։
8 Ամէն ժամանակ անոր յուսացէք՝ ով ժողովուրդ. անոր առջին սրտերնիդ թափեցէք. Աստուած ապաւէն է մեզի ։ (Սէլա՛ ։)
9 Արդարեւ ռամիկ մարդիկը փուճ են, ազնուական մարդիկը սուտ են. թէ որ կշիռքի մէջ դրուելու ըլլան, ամէնքն ալ ունայնութենէն թեթեւ են ։
10 Հարստահարութեան մի՛ յուսաք, ու յափշտակութեան վրայ փուճ յոյս մի՛ դնէք. հարստութիւնը թէ որ շատնայ, անոր վրայ սիրտ մի՛ դնէք ։
11 Մէկ անգամ խօսեցաւ Աստուած. երկու անգամ լսեցի ասիկայ, թէ զօրութիւնը Աստուծոյ է ։
12 Ողորմութիւնն ալ քուկդ է՝ ով Տէր, ինչու որ ամէն մէկուն իր գործքին համեմատ հատուցում կ'ընես ։

## ՍԱՂՄ. ԿԳ

1 Դաւիթին փափաքը Աստուծոյ համար. 4 անոր Աստուած օրհնելուն կերպը. 9 իր թշնամիներուն կործանումը, ու իր ապահովութեանը վրայով իր վստահութիւնը ։

Սաղմոս Դաւթի, երբոր ինքը Յուդայի անապատին մէջն էր ։

1 Ո՛վ Աստուած՝ դուն ես իմ Աստուածս, ես առտուանց քեզ կը փնտռեմ ։ Հոգիս կը ծարաւի քեզի, ու մարմինս քեզի կը փափաքի չոր ու ծարաւ տեղը, ուր որ ջուր չկայ.
2 Քու զօրութիւնդ ու փառքդ տեսնելու համար, ինչպէս որ քեզ տեսած եմ սրբարանին մէջը ։
3 Որովհետեւ քու ողորմութիւնդ կեանքէն աղէկ է. իմ շրթունքներս քեզ պիտի գովեն ։
4 Ասանկ պիտի օրհնեմ քեզ իմ կենացս մէջ. քու անունովդ ձեռքերս վեր պիտի վերցնեմ ։
5 Իբր թէ ճարպով ու պարարտութիւնով պիտի կշտանայ իմ անձս, ու ցնծութեան շրթունքներով պիտի գովէ քեզ իմ բերանս.
6 Երբոր անկողինիս վրայ քեզ կը յիշեմ, գիշերուան պահերուն մէջ քու վրայովդ կը մտածեմ.
7 Վասն զի ինծի օգնական եղար. ու քու թեւերուդ հովանաւորութեանը տակը պիտի ցնծամ ։
8 Իմ անձս քեզի հետեւելով կը յարի. քու աջ ձեռքդ զիս կը պահէ ։
9 Բայց անոնք որ իմ անձս կը փնտռեն անիկայ կորսնցնելու համար, երկրին խորունկ տեղերը պիտի մտնեն.

Բ Եզեկ․ լե․ 5։
* Կամ՝ ճագարներուն
Ժ Բ Օր․ գ 13։ Եսա․ խե․ 23։ Կե 16։ Սոփ․ ա․ 5։

10 Յ Սուրի պիտի մատնուին․ * աղուէսներուն բաժին պիտի ըլլան ։
11 Բայց թագաւորը Աստուծով պիտի ուրախանայ․ Ժ անով երդում ընողներուն բոլորը պիտի պարծին․ իսկ ստախօսներուն բերանը պիտի պապանձի ։

## ՍԱՂՄ․ ԿԴ

1 Դաւիթ իր թշնամիներէն ազատելու համար աղօթք կ'ընէ ․ 7 կը մարգարէանայ թէ իր թշնամիներուն յայտնի կորուստ պիտի գայ, ինչպէս որ արդարը անոր վրայ ուրախանայ ։

Գլխաւոր երգեցողին․ Սաղմոս Դաւթի ։

1 Ո՛վ Աստուած՝ լսէ իմ ձայնս իմ ղանգատելու ատենս․ թշնամիին վախէն իմ կեանքս պահպանէ ։
2 Ծածկէ զիս չարերուն ժողովքէն, անօրէնութիւն գործողներուն բազմութենէն
3 Ա Որոնք իրենց լեզուները թուրի պէս կը սրեն, Բ իրենց նետերը կը քաշեն, որ լեղի խօսքեր են,
4 Գաղտուկ տեղէն անմեղին նետելու համար․ յանկարծակի անոր կը նետեն ու չեն վախնար ։
5 Գ Իրենց մէջ չար խօսքեր կը հաստատեն․ որոգայթներ դնելու համար կը խօսին, Դ կ'ըսեն թէ՝ Անոնք ո՞վ պիտի տեսնէ ։
6 Անօրէնութիւն կը փնտռեն․ Ե կ'ըսեն թէ՝ Կատարեցինք մեր փնտռած փնտռելը․ մարդուն ներսը և սիրտը խորունկ է ։
7 Ե Բայց Աստուած անոնք պիտի զարնէ նետով․ անոնք յարկարծ պիտի վիրաւորին ։
8 Ու Զ իրենց լեզուն իրենց վրայ պիտի հանդպցընեն․ Է ամէն անոնք տեսնողները պիտի փախչին ։
9 Ը Եւ բոլոր մարդիկ պիտի վախնան, ու Թ Աստուծոյ գործքը պատմեն, ու անոր բրածին ուշադրութեամբ պիտի նային ։
10 Ժ Արդարը Տէրոջմով պիտի ուրախանայ, և անոր պիտի յուսայ․ և ամէն ուղիղ սրտով եղողները պիտի պարծին ։

## ՍԱՂՄ․ ԿԵ

1 Դաւիթ զԱստուած կը գովաբանէ՝ անոր շնորհքներուն համար․ 4 Աստուծոյ բնութեանը երջանկութիւնը ու անոնց վայելած բարիքները ։

Գլխաւոր երգեցողին․ Դաւթին Սաղմոսը — երգը ։

1 Քեզի կը սպասէ օրհնութիւնը՝ ով Աստուած, Սիոնի մէջ, ու քեզի ուխտը պիտի կատարուի ։
2 Ով աղօթքի լսող՝ Ա քեզի պիտի գայ ամէն մարմին․

Ա Սաղ․ ժա․ 2։ ծէ․ 4։
Բ Սաղ․ ծը․ 7։ Երեմ․ թ․ 3։
Գ Տեսն Առակ․ ա․ 11։
Դ Սաղ․ ժ․ 11։ ծթ․ 7։
Ե Կամ՝ Իրենց խորհած խորհուրդը կը ծածկեն․
Ե Սաղ․ է․ 12, 13։
Զ Առակ․ ժբ․ 13։ ժը․ 7։
Է Սաղ․ լա․ 11։ ծբ․ 6։
Ը Սաղ․ [illegible] 3։
Թ Երեմ․ [illegible] 28։ [illegible] 10։
Ժ Սաղ․ լբ․ 11։ ծբ․ 10։ կը․ 3։
Ա Կամ՝ լռիկ կը սպասէ․ տես Սաղ․ կբ․ 1։
Ա Եսա․ կզ․ 23։

3 Բ Անօրէնութիւնները իմ վրաս զօրացան․ Գ մեր մեղքերը դուն պիտի քաւես ․
4 Դ Երանի անոր՝ որ Ե կ'ընտրես, ու քեզի կը մօտեցընես, որ բնակի քու սրահներուդ մէջը․ Զ պիտի լցուինք քու տանդ՝ քու սուրբ տաճարիդ բարութենէն ։
5 Ահաւոր բաներով՝ արդարութիւնով պիտի պատասխանես մեզի, ով մեր փրկութեան Աստուածը, որ Է երկրի ամէն ծայրերուն ու ծովուն մէջը հեռու եղողներուն յոյսն ես ․
6 Որ քու զօրութիւնովդ լեռները հաստատեցիր, Ը կարողութիւնով գօտի կապուեցար ․
7 Թ Որ կը ցածցընես ծովուն ձայնը, անոր ալիքներուն ձայնը, Ժ ու ազգերուն խռովութիւնը ։
8 Ու երկրի ծայրերը բնակողները պիտի վախնան քու նշաններէդ․ առտուան ու իրիկուան ելքը դուն կ'ուրախացընես ։
9 Ի Երկրին այցելութիւն կ'ընես ու եզանակայ կը ջրես․ շատ կը հարստացընես անիկայ․ Ի Աստուծոյ գետը ջրով լեցուն է․ անոնց ցորեն կը պատրաստես․ վասն զի ասանկ պատրաստեցիր անիկայ ։
10 Անոր ակօսները կը խմցընես, ու անոր փոսերը կը շիտկես․ անձրևներով կը կակուղցընես անիկայ, կ'օրհնես անոր բոյսը ։
11 Կը պսակես տարին քու բարութիւնովդ, ու քու շաւիղներդ պարարտութիւն կը կաթեցընեն․
12 Անապատի արօտներուն վրայ կը կաթեցընեն․ ու բլուրները ուրախութիւնով պատած են ։
13 Արօտները հօտերով հագուած են, ու Ժ հովիտները ցորենով ծածկուած են․ ցնծութեամբ կ'աղաղակեն, ու կ'երգեն ։

## ՍԱՂՄ․ ԿԶ

1 Դաւիթ կը յորդորէ մարդիկը որ զԱստուած գովեն․ 5 անոր մեծ գործքերը դիտութեամբ զննեն, 8 և զանիկայ օրհնեն իր բարութիւններուն համար․ 12 իսկ ինքը ուխտ կ'ընէ՝ որ Աստուծոյ հոգևոր ծառայութիւն մատուցանէ․ 16 և Աստուծոյ իրեն ըրած մասնաւոր բարութիւնները կը պատմէ ։

Գլխաւոր երգեցողին․ Սաղմոս — երգ ։

1 Ով բոլոր երկիր՝ ցնծութիւնով Ա Աստուծոյ աղաղակեցէք ։
2 Սաղմոս երգեցէք անոր անուանը փառքին․ փառաւոր ըրէք անոր օրհնութիւնը ․
3 Աստուծոյ ըսէք թէ՝ Ինչպէս Բ ահաւոր են քու գործքերդ․ Գ քու մեծ զօրութեանդ համար թշնա-

Բ Սաղ․ լը․ 4։ խ․ 12։
Գ Կամ՝ Անօրէնութեան խօսքերը
Դ Սաղ․ ծա․ 2։ Եբր․ թ․ 14։ Եսա․ ա․ 7, 9։
Ե Սաղ․ լգ․ 12։ Յովհ․ ժե․ 16։
Զ Սաղ․ լզ․ 8։ Յովհ․ ժե․ 16։
Է Սաղ․ դ․ 3։
Զ Սաղ․ լդ․ 8։
Ը Սաղ․ իր․ 27։
Ը Սաղ․ ղգ․ 1։
Թ Սաղ․ չթ․ 9։ Մտ․ ը․ 26։ Մատթ․ ը․ 26։
Ժ Սաղ․ ճզ․ 10։ Եսա․ ժէ․ 12, 13։
Ի Բ Օր․ ժա․ 12։
Ի Սաղ․ կը․ 9, 10։ ճգ․ 13։ Երեմ․ ե․ 24։
Ի Սաղ․ խզ․ 4։
Ժ Եսա․ ծե․ 12։
Ա Սաղ․ ճ․ 1։
Բ Սաղ․ կե․ 5։
Գ Սաղ․ ժը․ 44։

թշնամիներդ քեզի՝ խոնարհութիւն պիտի ընեն" ։

4 Բոլոր երկիրը երկրպագութիւն պիտի ընէ քեզի . սաղմոս պիտի երգէ քեզի , սաղմոս պիտի երգէ քու անուանդ ։ (Սէլա ։)

5 Եկէք ու տեսէք Աստուծոյ ըրածները ․ Անիկա իր գործքովը մարդոց որդիներուն վրայ ահաւոր է ։

6 Ծովը ցամաքի դարձուց , գետէն ոտքով անցան . ան տեղը իրմով ուրախացանք ։

7 Իր ուժովը յաւիտեան կը տիրէ ։ Անոր աչքերը ազգերը կը դիտեն . ապստամբները թող չբարձրանան ։ (Սէլա ։)

8 Ով ժողովուրդներ՝ օրհնեցէք մեր Աստուածը , ու լսել տուէք անոր գովութեան ձայնը ։

9 Անիկայ մեր հոգին կենդանի կը պահէ , ու ոտքերնուս սասանիլ չտար ։

10 Ինչու որ դուն քննեցիր մեզ՝ ով Աստուած . փորձեցիր մեզ , ինչպէս որ արծաթը կը փորձուի ։

11 Մեզ որոգայթի մէջ մտցուցիր , ծանր բեռ դրիր մեր կռնակին վրայ ։

12 Մեր գլուխներուն վրայ մարդիկ հեծցուցիր . Կրակը ու ջուրը մտանք , սակայն մեզ առատութեան տեղ հանեցիր ։

13 Ողջակէզներով պիտի մտնեմ քու տունդ , քեզի պիտի հատուցանեմ իմ ուխտերս ,

14 Որ շրթունքներս խոստացան , ու նեղութեանս մէջ բերանս խօսեցաւ ։

15 Պարարտ ողջակէզներ պիտի մատուցանեմ քեզի խոյերու խունկով . զուարակներ պիտի զոհեմ նոխազներու հետ ։ (Սէլա ։)

16 Եկէք լսեցէք դուք ամէնքդ որ Աստուծմէ կը վախնաք , ու պատմեմ՝ ինչ որ ըրաւ իմ անձիս ։

17 Բերնովս անոր աղաղակեցի . ու լեզուովս անիկայ բարձրացուցի ։

18 Եթէ որ սրտիս մէջ անօրէնութիւն տեսնէի , Տէրը պիտի չլսէր ։

19 Սակայն Աստուած լսեց , իմ աղօթքիս ձայնը մտիկ ըրաւ ։

20 Օրհնեալ ըլլայ Աստուած , որ իմ աղօթքս չմերժեց , ու իր ողորմութիւնը ինծմէ ետ չդարձուց ։

## ՍԱՂՄ . ԿԷ

1 Սաղմոսերգուն աղօթք կ՚ընէ Աստուծոյ արքայութեանը ընդարձակութեանը համար , 3 որ ժողովուրդը ուրախանայ , 6 ու Աստուծոյ բարերարութիւնները տարածուին ։

Գլխաւոր երգեցողին , Նէկինօթի վրայ . Սաղմոս ու երգ ։

1 Աստուած ողորմի մեզի , ու օրհնէ մեզ , երեսը փայլեցնէ մեր վրայ , (Սէլա ։)

2 Որ երկրի վրայ քու ճամբադ ճանչցուի , ու ամէն ազգաց մէջ քու փրկութիւնդ ։

3 Թող ժողովուրդները քեզ գովեն՝ ով Աստուած , բոլոր ժողովուրդները քեզ գովեն ։

4 Ազգերը թող ուրախանան ու ցնծան . վասն զի ժողովուրդները ուղղութիւնով պիտի դատես , ու երկրի ազգերուն դուն պիտի առաջնորդես ։ (Սէլա ։)

5 Թող ժողովուրդները քեզ գովեն՝ ով Աստուած , բոլոր ժողովուրդները քեզ գովեն ։

6 Երկիրը իր պտուղը պիտի տայ ։ Ու Աստուած՝ մեր Աստուածը մեզ պիտի օրհնէ ։

7 Աստուած մեզ պիտի օրհնէ , ու երկրի ամէն ծայրերը անկէ պիտի վախնան ։

## ՍԱՂՄ . ԿԸ

1 Աստուծոյ ողորմութիւններուն համար . 7 իր եկեղեցիին հոգ տանելուն համար . 19 ու իր մեծ գործքերուն համար՝ գովքը գովաբանելու յորդորանք մը ։

Գլխաւոր երգեցողին . Դաւիթին Սաղմոսը ու երգը ։

1 Թող ելլէ Աստուած , անոր թշնամիները թող ցրուին , ու զանիկայ ատողները իր երեսէն թող փախչին ։

2 Մուխին ցրուելուն պէս ցրուէ զանոնք . ինչպէս որ մոմը կրակին առջին կը հալի , այնպէս թող կորսուին ամբարիշտները Աստուծոյ երեսէն ։

3 Բայց արդարները թող ուրախանան , Աստուծոյ առջին թող ցնծան , և ուրախութիւնով զուարճանան ։

4 Երգեցէք Աստուծոյ , սաղմոս երգեցէք անոր անուանը . ճամբայ պատրաստեցէք անապատներուն մէջէն հեծնողին , Որուն անունը Եահ է , ու ցնծացէք անոր առջին ։

5 Որբերուն հայրը ու որբեւարիներուն դատաւորը Աստուած իր սուրբ բնակարանին մէջ ։

6 Աստուած մինակ եղողները տան մէջ կը բնակեցընէ , կապուածները յաջողութեան կը հանէ . բայց ապստամբները չոր տեղ կը բնակին ։

7 Ով Աստուած՝ երբ ժողովուրդիդ առջեւէն գացած ատենդ , անապատէն անցած ատենդ , (Սէլա ։)

8 Երկիրը շարժեցաւ երկինքն

ալ շող կաթեցուց Աստուծոյ երեսէն. Սինան ալ շարժեցաւ Աստուծոյ՝ Իսրայէլի Աստուծոյն առջեւէն։

9 Ով Աստուած՝ Քու ժառանգութեանդ առատօրէն անձրեւ տուիր. երբոր յոգնած էր, դուն հաստատեցիր անիկայ։

10 Քու ժողովուրդդ անոր մէջ բնակեցաւ. Քու քաղցրութեամբդ աղքատին համար պատրաստեցիր, ով Աստուած։

11 Տէրը խօսք տուաւ. աւետիս տուողները մեծ բազմութիւն են։

12 Զօրքերուն թագաւորները կը փախչին. կը փախչին, ու տան մէջ բնակող կինը աւարը կը բաժնէ։

13 Թէեւ զոմերուն մէջտեղը պառկած ըլլաք, աղաւնիի թեւերուն պէս պիտի ըլլաք արծաթով պատած, ու անոր փետուրները դեղին ոսկիով։

14 Ամենակարողը անոր երկրին վրայ թագաւորները ցրուած ատենը՝ երկիրը Սեղմոնին մէջի ձիւնին պէս ճերմկեցաւ։

15 Աստուծոյ լեռը Բասան լեռն է, բազմագագաթ լեռը Բասան լեռն է։

16 Ո՛վ բազմագագաթ լեռներ՝ ինչո՞ւ նախանձով կը նայիք. այն լեռն է՝ որ Աստուած հաճեցաւ անոր մէջ բնակելու. յիրաւի Տէրը հոն պիտի բնակի յաւիտեան։

17 Աստուծոյ կառքերը երկու անգամ տասը հազար են, հազար հազարաց. Տէրը անոնց մէջն է, իր սուրբ տեղն է՝ իբրեւ Սինայի մէջ։

18 Բարձր տեղը ելար, գերութիւնը գերի բերիր. պարգեւներ առիր մարդոց համար, ու ապստամբներուն համար ալ, որ Տէր Աստուած անոնց մէջ բնակի։

19 Տէրը օրհնեալ ըլլայ օրէ օր. թէ որ ծանր բեռ մը դնէ մեր վրայ", Աստուած է մեր փրկիչը։ (Սելա։)

20 Աստուած մեզի փրկութեան Աստուած է, ու մահուանէ ազատութիւնը Տէր Եհովայէն է։

21 Սակայն Աստուած պիտի փշրէ իր թշնամիներուն գլուխը, նաեւ իր անօրէնութիւններուն մէջ պտըտողին գիսաւոր գագաթը։

22 Տէրը ըսաւ. "Զանոնք Բասանէն ետ դարձընեմ, ծովուն անդունդներէն ետ դարձընեմ.

23 Անանկ որ ոտքդ արեան մէջ թաթխուի, շուներուդ լեզուն թշնամիներէն իր բաժինը առնէ."

24 Քու քալուածքներդ տեսան ով Աստուած, իմ Աստուծոյս իմ Թագաւորիս քալուածքները սուրբ տեղին մէջ։

25 Առջեւէն երգեցողները գացին, ետեւէն նուագածուները, թմբուկ զարնող կոյսերուն մէջտեղը։

26 Ժողովուրդներուն մէջ օրհնեցէք զԱստուած, Տէրը՝ ով Իսրայէլի աղբիւրէն եղողներ։

27 Ան տեղն է փոքր Բենիամինը անոնց տիրապետողը, Յուդայի իշխանները իրենց բազմութեամբը, Զաբուղոնի իշխանները ու Նեփթաղիմի իշխանները։

28 Քու Աստուածդ քու զօրութիւնդ հաստատեց. զօրացուր ով Աստուած՝ ան բանը որ մեզի համար ըրիր։

29 Երուսաղէմ եղող տաճարիդ համար թագաւորները քեզի ընծաներ պիտի բերեն։

30 Եղէգներու մէջ բնակող գազանները, ու զուարակներուն ժողովքը ժողովրդոց զուարակներուն հետ սաստէ, որ խոնարհին արծաթի կտորուանքը բերելով. պատերազմ սիրող ժողովուրդները ցրուէ։

31 Եգիպտոսէն աւնուականներ պիտի գան. Եթովպիա իր ձեռքերը շուտով Աստուծոյ պիտի երկնցնէ։

32 Ով երկրի թագաւորութիւններ՝ երգեցէք Աստուծոյ, սաղմոս ըսէք Տէրոջը, (Սելա.)

33 Անոր՝ որ յաւիտենից երկինքներուն երկինքին վրայ կը նստի. ահա անիկայ իր ձայնովը զօրաւոր ձայն կու տայ։

34 Զօրութիւն տուէք Աստուծոյ. անոր մեծվայելչութիւնը Իսրայէլին վրայ է. ու անոր զօրութիւնը ամպերուն մէջն է։

35 Ահաւոր ես ով Աստուած՝ Իսրայէլին Աստուածը. քու սուրբ տեղերուդ մէջ. ինք կու տայ իր ժողովուրդին ոյժ ու կարողութիւն. Աստուած օրհնեալ ըլլայ։

## ՍԱՂՄՈՍ ԿԹ

1 Դաւիթ իր նեղութեանը համար կը գանգատի. 13 աղօթք կ՚ընէ իր ազատութեանը համար. 22 ու իր թշնամիներուն կործանմանը համար. 30 զԱստուած կը փառաւորէ շնորհակալութիւնով։

Գլխաւոր երգեցողին, Շօշանիմի վրայ. Սաղմոս Դաւթի։

1 Ապրեցուր զիս ով Աստուած, վասն զի ջուրերը իմ անձիս հասան։

2 Խորունկ ցեխի մէջ կ՚ընկղմիմ, ուր ոտք կայնելու տեղ չկայ. ջուրերուն խորունկ տեղերը մտայ, ու յորձանքները զիս ընկղմեցին։

3 Յոգնեցայ ես կանչելս. կոկորդս ցամքեցաւ. աչքերս նուաղեցան իմ Աստուծոյս սպասելէն։

4 [դ]Առանց պատճառի իս ատողները գլխուս մազերէն շատ են. իմ փուճ տեղը կորսնցընող թշնամիներս զօրացան. ան բանը՝ որ չէի յափշտակեր, ան ատենը վճարեցի։
5 Ով Աստուած՝ իմ յիմարութիւնս դուն գիտես, ու յանցանքներս քեզմէ ծածկուած չեն։
6 Քեզի համբերողները իմ պատճառովս չամչնան, ով Տէր՝ զօրաց Տէրը. քեզ փնտռողները իմ պատճառովս ամօթով չըլլան, ով Իսրայէլին Աստուածը։
7 Վասն զի քեզի համար նախատինքի համբերեցի. ամօթը ծածկեց իմ երեսս.
8 [ե]Եղբայրներուս օտար՝ ու մօրս որդւոցը անծանօթ եղայ։
9 [զ]Ինչու որ քու տանդ նախանձը իս կերաւ, [է]ու քեզ նախատողներուն նախատինքները իմ վրաս ինկան։
10 [ը]Իմ անձիս ծոմ պահելովը լացի, ու —— ինծի նախատինք սեպուեցաւ։
11 Եւ իմ հանդերձս քուրձ ըրի, [թ]ու անոնց առակ եղայ։
12 Դուռը նստողները իմ վրայովս կը խօսին, ու [ժ]արբեցողներուն խաղը եղայ։
13 Բայց ես իմ աղօթքս կ'ընեմ քեզի ով Տէր՝ [ի]ընդունելի ժամանակին. ով Աստուած՝ քու մեծ ողորմութիւնովդ. քու փրկութեանդ ճշմարտութիւնովը ինծի պատասխան տուր.
14 Հանէ զիս ցեխէն, ու չընկղմիմ. [լ]զիս ատողներէն, ու խորունկ ջուրերէն ազատուիմ։
15 Ջուրերուն յորձանքը թող իս չընկղմէ, ու անդունդը իս չկլլէ, ու *ջրհորը [խ]իր բերանը վրաս չգոցէ։
16 Պատասխան տուր ինծի ով Տէր. [ծ]վասն զի քու ողորմութիւնդ քաղցր է. քու առատ գթութեանդ համեմատ [կ]նայէ ինծի։
17 Ու [հ]երեսդ մի ծածկեր քու ծառայէդ. վասն զի ես նեղութեան մէջ եմ. շուտով պատասխան տուր ինծի։
18 Իմ անձիս մօտեցիր, —— զանիկայ փրկէ. իմ թշնամիներուս համար իս ազատէ։
19 Դուն գիտես [ձ]իմ նախատինքս, և իմ ամօթս ու իմ խայտառակութիւնս. քու առջիդ են բոլոր իս նեղողները։
20 Նախատինքը սիրտս կոտրեց ու հիւանդ եղայ. [ղ]մխիթարիչ եղողի մը նայեցայ, բայց չկար, ու [ճ]մխիթարութիւն տուողներուն՝ բայց չգտայ։

[դ] Սաղ. լե. 19; Յովհ. ժե. 25։
[ե] Սաղ. լա. 11; Եսա. ծգ. 3; Յովհ. ա. 11; է. 5։
[զ] Սաղ. ճժթ. 139; Յովհ. բ. 17։
[է] Տես Սաղ. ձթ. 50, 51; Հռովմ. ժե. 3։
[ը] Սաղ. լե. 13, 14։
[թ] Թագ. թ. 7; Երեմ. իդ. 9։
[ժ] Յոբ. լ. 9; Սաղ. լե. 15, 16։
[ի] Եսա. խթ. 8; ծե. 6; բ Կոր. զ. 2։
[լ] Սաղ. ճխդ. 7; Հմր 1, 2, 15։
* Կամ՝ գուբը
[խ] Թուոց ժզ. 33։
[ծ] Սաղ. կգ. 3։
[կ] Սաղ. իե. 16; ձզ. 16։
[հ] Սաղ. իէ. 9; ճբ. 2։
[ձ] Սաղ. իբ. 6, 7; Եսա. ծգ. 3; Եբր. ժբ. 2։
[ղ] Սաղ. ճխբ. 4; Եսա. կգ. 5։
[ճ] Յոբ. ժզ. 2։

21 Հապա կերակուրի տեղ թոյն տուին ինծի. [ն]ու ծարաւած ատենս քացախ խմցուցին ինծի։
22 [շ]Անոնց սեղանը իրենց առջին որոգայթ, ու յաջողութեան տեղ վարմ ըլլայ։
23 [ո]Անոնց աչքերը մթանան որ չտեսնեն. ու անոնց մէջքերը միշտ դողացուր։
24 [չ]Քու սրտմտութիւնդ անոնց վրայ թափէ. ու սաստիկ բարկութիւնդ անոնց վրայ հասնի։
25 [պ]Անոնց բնակարանը աւերակ ըլլայ. —— անոնց վրաններուն մէջը բնակող չգտնուի։
26 Վասն զի զան որ դուն զարկիր, [ջ]անոնք կը հալածեն, և քու վիրաւորածիդ ցաւին վրայով կը խօսին։
27 [ռ] [ս]Անոնց անօրէնութեանը վրայ անօրէնութիւն դիր, [վ]և քու արդարութեանդ չհասնին։
28 [տ]Կենաց գրքէն թող ջնջուին, [ր]ու արդարներուն հետ չգրուին։
29 Բայց ես աղքատ ու վշտացած եմ. ով Աստուած՝ քու փրկութիւնդ թող իս պաշտպանէ։
30 [ց]Աստուծոյ անունը պիտի գովեմ երգով, ու պիտի բարձրացընեմ անիկայ գոհութիւնով։
31 [ւ]Ու —— եղջերաւոր —— կճղակաւոր եզէն —— զուարակէն աւելի ընդունելի պիտի ըլլայ Տէրոջը։
32 [փ]Հեզերը պիտի տեսնեն ու ուրախանան. [ք]ով Աստուած փնտռողներ՝ ձեր սիրտն ալ պիտի ապրի։
33 Վասն զի Տէրը տնանկներուն կը լսէ, ու [օ]իր կապուածները չանարգեր։
34 [ֆ]Թող գովեն զանիկայ երկինքը ու երկիրը, ծովը [ա]ու բոլոր անոր մէջը շարժողները։
35 [բ]Ինչու որ Աստուած Սիոնը պիտի փրկէ, ու Յուդայի քաղաքները պիտի շինէ. և հոն պիտի բնակին ու ժառանգեն անիկայ։
36 [գ]Եւ իր ծառաներուն սերունդը պիտի ժառանգէ անիկայ. ու իր անունը սիրողները անոր մէջը պիտի բնակին։

## ՍԱՂՄ. Հ

1—5 Դաւիթ կը խնդրէ Աստուծմէ որ շուտով չարերը կործանէ, ու բարեպաշտները պաշտպանէ։

Գլխաւոր երգեցողին. Սաղմոս Դաւթի, [ա]յիշատակի համար։

1 [բ]Ով Աստուած՝ իս փրկելու [illegible] ըրէ, ով Տէր՝ ինծի օգնելու արտորցիր։
2 [գ]Թող ամչնան ու խայտառակ ըլլան իմ անձս փնտռողները. ետ դառնան ու ամօթով ըլլան ինծի չարիք ուզողները։

[ն] Մատ. իէ. 34, 48; Մարկ. ժե. 23; Յովհ. ժթ. 29։
[շ] Հռովմ. ժա. 9, 10։
[ո] Եսա. զ. 9, 10; Յովհ. ժբ. 39, 40; Հռովմ. ժա. 10; բ Կոր. գ. 14։
[չ] ա Թես. բ. 16։
[պ] Մատ. իգ. 38; Գործ. ա. 20։
[ջ] Եսա. ծգ. 4։
[ռ] Տես բ Մն. իը. 9; Զաք. ա. 15։
[ս] Հռովմ. ա. 25։
[վ] Եսա. իզ. 10։
[տ] Ել. լբ. 32; Փիլ. դ. 3; Յայտ. գ. 5; ժգ. 8։
[ր] Եզեկ. ժգ. 9; Ղուկ. ժ. 20; Եբր. ժբ. 23։
[ց] Սաղ. իը. 7։
[ւ] Սաղ. ծ. 13, 14, 23։
[փ] Սաղ. լդ. 2։
[ք] Սաղ. իբ. 26։
[օ] Եփե. գ. 1։
[ֆ] Սաղ. ղզ. 11; Ճխր. 1; Եսա. խդ. 23; խթ. 13։
[ա] Եսա. ծե. 12։
[բ] Սաղ. ծա. 18; Եսա. խդ. 26։
[գ] Սաղ. ճբ. 28։

[ա] Սաղ. լը. ին վերնագիրը։
[բ] Սաղ. խ. 13, ... ; Հա. 12։
[գ] Սաղ. լե. 4, 26; Հա. 13։

3 ա Թող *ամչնալով ետ դառնան
անոնք որ ինծի Վաշ վաշ կ'ըսեն ։
4 Ամէն քեզ փնտռողները քեզմով
թող ցնծան ու ուրախանան . և
քու փրկութիւնդ սիրողները ամէն
ժամանակ թող ըսեն . Աստուած
մեծանայ ։
5 բ Բայց ես աղքատ ու տնանկ եմ .
ով Աստուած՝ գ շուտով հասիր ին-
ծի . իմ օգնականս ու փրկիչս դուն
ես . ով Տէր՝ մի՛ ուշանար ։

ա Սաղ. Խ. 15. * Կամ՝ իրենց ամօթին պատճառաւը
բ Սաղ. Խ. 17. գ Սաղ. ՃԼա. 1.

## ՍԱՂՄ. ՀԱ

1 Դաւիթ հաւատքի վստահութիւնով ու Աստուծոյ շնորհքին փորձառութեամբը՝ աղօթք կ'ընէ իրեն համար, և իր անձին թշնամիներուն դէմ . 14 Հաւատարմութիւն կը խոստանայ . 19 զԱստուած կը փառաւորէ , ու կը խոստանայ յօժար սրտիւ անանկ ընել ։

1 Ո՛վ Տէր՝ ա քեզի յուսացայ , չա-
միշնամ յաւիտեան ։
2 բ Քու արդարութեամբդ զիս ազ-
բեցուր ու ազատէ զիս . գ ականջդ
ծռէ ինծի , ու փրկէ զիս ։
3 դ Ինծի ապաւինութեան վէմ ե-
ղիր , որ միշտ հոն երթամ . դուն
ե հրաման տուիր զիս փրկելու , ին-
չու որ իմ վէմս ու բերդս դուն ես ։
4 զ Ո՛վ իմ Աստուածս՝ ամբարշ-
տին ձեռքէն , անօրէնին ու բռնա-
ւորին ձեռքէն զիս փրկէ՛ .
5 Վասն զի է իմ ակնկալութիւնս
դուն ես՝ ով Տէր Եհովայ . ման-
կութենէս 'ի վեր իմ յոյսս դուն
ես .
6 ը Ես քեզի հաստատուեցայ ար-
գանդէն , մօրս որովայնէն իմ
պաշտպանս դուն ես . իմ գովու-
թիւնս միշտ քու վրադ է ։
7 թ Զարմանալի բանի մը պէս եղայ
շատերուն , բայց իմ զօրաւոր ա-
պաւէնս դուն ես ։
8 ժ Բերանս քու գովաբանութիւ-
նովդ լցուի , ամէն օր քու փառա-
բանութիւնովդ ։
9 ի Ծերութեան ատենս զիս մի՛ ձը-
գեր . ոյժս պակսած ատենը զիս մի՛
թողուր ։
10 Ինչու որ թշնամիներս ինծի հա-
մար կը խօսին , ու իմ անձս պա-
շարողները լ մէկտեղ խորհուրդ կ'ը-
նեն ,
11 Ըսելով . Աստուած թողուց ա-
նիկայ . հալածեցէ՛ք ու բռնեցէ՛ք
անիկայ . վասն զի ազատող մը չը-
կայ ։
12 խ Ո՛վ Աստուած՝ ինծմէ մի՛ հե-
ռանար . ով իմ Աստուածս՝ ծ ին-
ծի օգնելու արտորցիր ։
13 կ Թող ամչնան ու կորսուին իմ
անձիս հակառակորդները . նախա-
տինքով ու ամօթով թող ծած-
կուին ինծի չարութիւն ուզողնե-
րը ։

ա Սաղ. ԻԵ. 2. 3 ; ԼԱ. 1.
բ Սաղ. ԼԱ. 1.
գ Սաղ. ԺԷ. 6.
դ Սաղ. ԼԱ. 2, 3.
ե Սաղ. ԽԴ. 4.
զ Սաղ. ՃԽ. 1, 4.
է Երեմ. ԺԷ. 7, 17.
ը Սաղ. ԻԲ. 9, 10 ; Եսա. ԽԶ. 3.
թ Ես. Ը. 18 ; Զաք. Գ. 8 ; ա Կոր. Դ. 9.
ժ Սաղ. ԼԵ. 28.
ի Հմր 18.
լ Բ Թագ. ԺԷ. 1 ; Մատ. ԻԷ. 1.
խ Սաղ. ԻԲ. 11, 19 ; ԼԵ. 22 ; ԼԸ. 21, 22.
ծ Սաղ. Հ. 1.
կ Հմր 24 ; Սաղ. ԼԵ. 4, 26 ; Խ. 14 ; Հ. 2.

14 Բայց ես ամէն ատեն պիտի յու-
սամ , և քու ամէն գովաբանու-
թիւններուդ վրայ պիտի աւելցը-
նեմ ։
15 հ Բերանս պիտի պատմէ քու ար-
դարութիւնդ . ամէն օր քու փըր-
կութիւնդ . ինչու որ ես ձ անոնց
համրանքը չեմ գիտեր ։
16 Պիտի քալեմ Տէր Եհովային զօ-
րութիւնովը . քու արդարու-
թիւնդ՝ միայն քուկինդ պիտի յի-
շեմ ։
17 Ո՛վ Աստուած՝ մանկութենէս 'ի
վեր սորվեցուցիր ինծի . ու մինչև
հիմա քու հրաշալի գործքերդ
պատմեցի ։
18 ղ Ու հիմա մինչև ծերութեան ու
ալևորութեան ատենս զիս մի ձգեր՝
ով Աստուած , մինչև որ պատմեմ
քու կարողութիւնդ գալու ազգին ,
և քու զօրութիւնդ ան ամենուն՝
որ պիտի գան ։
19 ճ Քու արդարութիւնդ ալ շատ
բարձր է՝ ով Աստուած , որ դուն
մեծամեծ բաներ ըրիր . մ քեզի պէս
ո՞վ կայ՝ ով Աստուած ։
20 յ Դուն որ շատ ու ծանր նեղու-
թիւններ ցուցուցիր ինծի , ն նորէն
զիս պիտի կենդանացընես . ու երկ-
րին անդունդներէն նորէն զիս պիտի
հանես ։
21 Իմ մեծութիւնս պիտի շատցը-
նես , ու դառնալով զիս պիտի մխի-
թարես ։
22 Ուստի ես ալ պիտի գովեմ քեզ
շ տաւիղով քու ճշմարտութեանդ
համար՝ ով իմ Աստուածս . սաղ-
մոս պիտի երգեմ քեզի քնարով .
ով ո Իսրայէլին Սուրբը ։
23 Քեզի սաղմոս երգած ատենս՝ իմ
շրթունքներս պիտի ցնծան . ու
չ իմ հոգիս՝ որ դուն փրկեցիր ։
24 պ Իմ լեզուս ալ ամէն օր քու
արդարութիւնդ պիտի խօսի . ին-
չու որ ինծի չարիք ուզողները
ամչցան ու խայտառակ եղան ։

հ Հմր 8, 24 ; Սաղ. ԼԵ. 28.
ձ Սաղ. Խ. 5 ; Ճլթ. 17, 18.
ղ Հմր 9.
ճ Սաղ. ԾԷ. 10.
մ Սաղ. ԼԵ. 10 ; ՁԶ. 8 ; ՁԹ. 6, 8.
յ Սաղ. Կ. 3.
ն Ովս. Զ. 1, 2.
շ Սաղ. ՂԲ. 1, 2, 3 ; ՃԾ. 3.
ո Բ Թագ. ԺԹ. 22 ; Ես. Կ. 9.
չ Սաղ. ՃԳ. 4.
պ Հմր 8, 15.
Հմր 13.

## ՍԱՂՄ. ՀԲ

1 Սաղմոսերգուն աղօթք ընելով Սողոմոնին համար . անոր թագաւորութեանը օրինակովը Քրիստոսին թագաւորութեանը բարութիւնը ու փառքը կը յայտնէ . 18 ու զԱստուած կ'օրհնէ ։

ա † Սողոմոնին համար՝ ։

1 Ո՛վ Աստուած՝ քու դատաստան-
ներդ թագաւորին տուր , ու
արդարութիւնդ թագաւորին որ-
դւոյն ։
2 բ Անիկայ արդարութիւնով պիտի
դատէ քու ժողովուրդդ , ու աղ-
քատներդ իրաւունքով ։
3 գ Լեռները խաղաղութիւն պիտի
բուսցընեն ժողովուրդին , ու բլուր-
ներն ալ՝ արդարութիւնով ։

ա Սաղ. ՃԻԷ ին վերնագիրը.
† Կամ՝ Սողոմոնին Սաղմոսը
բ Ես. ԺԱ. 2, 3, 4 ; ԼԲ. 1.
գ Սաղ. ՁԵ. 10 ; Ես. ԼԲ. 17 ; Օբ. 7.

4 Տ Ժողովուրդին աղքատներուն իրաւունք պիտի ընէ, տնանկին զաւակները պիտի ազատէ, ու բռնաւորը պիտի ջարդէ։

5 Քեզմէ պիտի վախնան Ե քանի որ արեգակը ու լուսինը կը մնան, ազգէ մինչև ազգ։

6 Զ Հնձուած խոտի վրայ ինկող անձրևի պէս պիտի իջնէ, շաղերու պէս՝ որ երկիրը կը թրջեն։

7 Անոր օրերուն մէջ արդարը պիտի ծաղկի. Է ու շատ խաղաղութիւն պիտի ըլլայ, մինչև որ ալ լուսին չըլլայ։

8 Ու Ը ծովէն մինչև ծովը պիտի տիրէ անիկայ, ու գետէն մինչև երկրի ծայրերը։

9 Թ Անոր առջին անապատին բնակիչները ծունկ պիտի չոքեն, Ժ ու անոր թշնամիները փոշի պիտի լզեն։

10 Ի Թարսիսի ու կղզիներուն թագաւորները ընծայ պիտի մատուցանեն. Շաբայի ու Սաբայի թագաւորները պարգև պիտի բերեն։

11 Լ Ու բոլոր թագաւորները անոր երկրպագութիւն պիտի ընեն. բոլոր ազգերը անոր պիտի ծառայեն։

12 Վասն զի Խ աղքատը պիտի փրկէ աղաղակելու ատենը, խեղճն ալ, ու անիկայ ալ՝ որ օգնութիւն չունի։

13 Պիտի խղճայ աղքատին ու տնանկին, և տնանկներուն անձերը պիտի ազատէ։

14 Նենգութենէ ու բռնութենէ պիտի փրկէ անոնց անձը, և Ծ անոնց արիւնը պատուական պիտի ըլլայ անոր առջին։

15 Ու պիտի ապրի, և Շաբայի ոսկիէն անոր պիտի տրուի. ու ամէն ատեն աղօթք պիտի մատուցուի անոր համար. ամէն օր պիտի օրհնեն զանիկայ։

16 Ցորենի առատութիւն պիտի ըլլայ երկրին մէջ, լեռներուն գլուխը. անոր պտուղը Լիբանանին պէս պիտի շարժի. ու Կ գետնի խոտին պէս պիտի ծաղկին *քաղաքացիները։

17 Հ Անոր անունը յաւիտեան պիտի մնայ. քանի որ արեգակը կը մնայ, անոր անունն ալ պիտի մնայ. ու Ձ մարդիկ անով պիտի օրհնուին. Ղ ամէն ազգերը երանութիւն պիտի տան անոր։

18 Ճ Օրհնեալ ըլլայ Տէր Աստուած՝ Իսրայէլին Աստուածը. Մ մինակ ինքն է հրաշքներ ընողը։

19 Ու Յ օրհնեալ ըլլայ յաւիտեան անոր փառաւոր անունը, Ն ու բոլոր երկիրը թող լեցուի անոր փառքովը։ Ամէն ու ամէն։

20 Յեսսէի որդւոյն Դաւիթին աղօթքները լմնցան։

Տ Ես. ժա. 4։
Ե Հմր 7, 17։ Սաղ. ձթ. 36, 37։
Զ Բ Թագ. իգ. 4։ Ովս. զ. 3։
Է Ես. բ. 4։ Դան. բ. 44։ Ղու. ա. 33։
Ը Տես Ել. իգ. 31։ Գ Թագ. դ. 21, 24։ Սաղ. բ. 8. Ձ. 11։ ձթ. 25։ Զաք. թ. 10։
Թ Սաղ. հզ. 14։
Ժ Ես. խթ. 23։ Միք. է. 17։
Ի Բ Մն. թ. 2. Ե Սաղ. խե. 12։ Կր 29 Ես. խթ. 7, կ. 9։
Լ Ես. խթ. 22, 23։
Խ Յոբ. իթ. 12։
Ծ Սաղ. ճժզ. 15։
Կ Տես Գ Թագ. դ. 20։
* Եբր. քաղաքէն։
Հ Սաղ. ձթ. 36։
Ձ Ծն. ժբ. 3. իբ. 18։ Երեմ. դ. 2։
Ղ Ղու. ա. 48։
Ճ Ա Մն. իթ. 10։ Սաղ. խա. 13։ ճզ. 48։
Մ Ել. ժե. 11։ Սաղ. հե. 14։ ճլզ. 4։
Յ Նեեմ. թ. 5։
Ն Թուոց. ժդ. 21։ Զաք. ժդ. 9։

## ՍԱՂՄ. ՀԳ

1 Մարգարէն՝ փորձութեան մը մէջ յաղթող գտնուելէն ետև՝ 2 կը ցուցնէ այն փորձութեանը պատճառը՝ այսինքն չարերուն յաջողութիւնը. 13 անոր տուած վնասը՝ այսինքն թերահաւատութիւնը. 15 ու անոր վրայ յաղթող ըլլալուն կերպը՝ այսինքն իմանալով Աստուծոյ խորհուրդը՝ թէ անիկայ չարը պիտի կործանէ ու արդարը պիտի պաշտպանէ։

Սաղմոս Ա Ասափայ։

1 Յիրաւի Աստուած բարի է Իսրայէլին, այսինքն սրտով մաքուր եղողներուն։

2 Բայց քիչ մնաց որ իմ ոտքերս պիտի ծռէին, ու մազ մնաց որ իմ քայլերս գայթակղէին։

3 Բ Վասն զի նախանձեցայ հպարտներուն, երբոր ամբարիշտներուն յաջողութիւնը տեսայ։

4 Ինչու որ իրենց մահուան ժամանակն ալ ցաւեր չունին. մարմիննին ալ պարարտ է։

5 Գ Անոնք մարդոց նեղութեանը մէջ չեն, և ուրիշ մարդոց հետ չեն տանջուիր։

6 Անոր համար վզնոցի պէս ամբարտաւանութիւնը անոնք կը շրջապատէ. բռնութիւնը Դ հանդերձի պէս անոնք կը ծածկէ։

7 Ե Անոնց աչքերը պարարտութենէն դուրս կ'ելլեն. անոնք սրտի խորհուրդներէն անդին կ'անցնին։

8 Ծաղր կ'ընեն ու Զ չարութիւնով կը խօսին բռնութեան համար. Է հպարտութիւնով կը խօսին։

9 Բերաննին Ը երկինքին դէմ կը դնեն, ու իրենց լեզուն երկրին մէջ կը պտըտի։

10 (Անոր համար իր ժողովուրդը հոս պիտի դառնայ, Թ ու առատութիւնով ջուր պիտի քամուի անոնց։)

11 Ու կ'ըսեն. Ժ Աստուած ինչպէ՞ս գիտէ. ու Բարձրելոյն քովը գիտութիւն կա՞յ։

12 Ահա ասոնք են ամբարիշտները որ միշտ Ի յաջողութիւն ունին, ու հարստութիւն կ'աւելցընեն։

13 Լ Յիրաւի զուր տեղը իմ սիրտս մաքրեցի, ու Խ իմ ձեռքերս անմեղութիւնով լուացի.

14 Որովհետև ամէն օր կը տանջուիմ. ու ամէն առտու կը խրատուիմ։

15 Թէ որ ըսէի՝ թէ ես ասանկ խօսիմ, ահա քու որդւոցդ ազգին նենգութիւն ըրած պիտի ըլլայի։

16 Ծ Երբոր խորհեցայ ասիկայ իմանալու, դժուար եկաւ իմ աչքերուս.

Ա Սաղ. ծ. ին վերնագիրը։
Բ Յոբ. իա. 7։ Սաղ. լէ. 1։ Երեմ. ժբ. 1։
Գ Յոբ. իա. 6, ...։
Դ Սաղ. ճթ. 18։
Ե Յոբ. ժե. 27։ Սաղ. ժէ. 10։ ճժթ. 70։ Երեմ. ե. 28։
Զ Ովս. է. 16։
Է Բ Պետ. բ. 18։ Յուդ. 16։
Ը Յայտ. ժգ. 6։
Թ Սաղ. հե. 8։
Ժ Յոբ. իբ. 13։ Սաղ. ժ. 11։ ղդ. 7։
Ի Հմր 3։
Լ Յոբ. իա. 15։ լգ. 9։ լե. 3։ Մաղ. գ. 14։
Խ Սաղ. իզ. 6։
Ծ Ժող. ը. 17։

17 Մինչեւ որ Աստուծոյ սրբարանը մտայ, ու անոնց վերջը իմացայ։
18 Իրաւ որ դուն անոնք սահելու տեղերը դրեր ես. կործանման մէջ իջեցուցիր անոնք։
19 Ի՜նչպէս յանկարծակի աւերմունքի մէջ ինկան. հատան, ու վախերով կորսուեցան։
20 Ինչպէս երազ մը մարդուն արթըննալէն ետքը, ով Տէր՝ քաղաքին մէջը անոնց պատկերը պիտի անարգես։
21 Բայց իմ սիրտս դառնացաւ, ու իմ երիկամունքներէս խոցուեցայ։
22 Ու ես յիմար էի ու չէի իմանար, քու առջեւդ անասուններու պէս էի։
23 Սակայն ես միշտ քեզի հետ եմ. դուն իմ աջ ձեռքէս կը բռնես։
24 Դուն պիտի առաջնորդես ինծի քու խորհրդովդ, ու վերջը փառքով զիս պիտի ընդունիս։
25 Ո՞վ ունիմ ես երկինքի մէջ. երկրի վրայ ալ քեզմէ ուրիշը չեմ ուզեր։
26 Իմ մարմինս ու սիրտս կը մաշին. բայց Աստուած իմ սրտիս զօրութիւնը ու իմ բաժինս է յաւիտեան։
27 Վասն զի ահա անոնք որ քեզմէ կը հեռանան՝ կը կորսուին. դուն կը սատկեցընես ամէնը՝ որ շնութիւն կ'ընեն՝ քեզմէ մոլորելով։
28 Բայց Աստուծոյ մօտենալս բարի է ինծի. յոյսս դրեր եմ Տէր Եհովային վրայ, որ քու բոլոր գործքերդ պատմեմ։

## ՍԱՂՄ · ՀԴ

1 Սրբարանին աւերման համար մարգարէն կը գանգատի. 10 զԱստուած օգնութեան կը կանչէ՝ յիշելով անոր կարողութիւնը. 18 զանիկայ նախատող թշնամիները, անոր ժողովուրդը, ու ըրած ուխտը։

Երգ Ասափայ։

1 Ով Աստուած՝ ինչո՞ւ մինչեւ բոլորովին մերժեցիր, ու բարկութիւնդ կը մխայ քու արօտիդ ոչխարներուն վրայ։
2 Յիշէ քու ժողովուրդդ՝ որ սկիզբէն ստացեր ես, քու ժառանգութեանդ վիճակը որ փրկեր ես, աս Սիոն լեռը ուր որ բնակեր ես։
3 Բարձրացուր քու ոտքերդ դէպ 'ի բոլորովին աւրուածներուն, սուրբ տեղին մէջը թշնամիին ըրած բոլոր գէշ գործքերուն։
4 Քու թշնամիներդ կը պոռան քու ժողովքիդ մէջը. իրենց նշանները նշանի տեղ կը դնեն։
5 Անիկայ անտառի ծառերուն վրայ կացիններ վերցընողի մը պէս գիտցուեցաւ.
6 Ու հիմա անոր քանդակագործ զարդերը, ամէնը մէկէն կացիններով ու մուրճերով կը կոտրեն։
7 Կրակով այրեցին քու սրբարանդ. մինչեւ գետինը կործանեցին քու անուանդ բնակարանը։
8 Իրենց սրտերուն մէջը ըսին թէ՝ Կորսընցընենք զանոնք ամէնը մէկտեղ. երկրին մէջ Աստուծոյ բոլոր ժողովարանները այրեցին։
9 Մեր նշանները չենք տեսներ. նաև մարգարէ չկայ. ու քովերնիս մէկն ալ չկայ, որ գիտնայ թէ՝ ասիկայ մինչեւ ե՞րբ պիտի տեւէ։
10 Ով Աստուած՝ մինչեւ ե՞րբ նախատինք պիտի ընէ նեղիչը. թշնամին մինչեւ յաւիտեան քու անունդ պիտի անարգէ՞։
11 Ինչո՞ւ ետ կը քաշես քու ձեռքդ՝ ու աջ ձեռքդ. ծոցէդ հանէ՝ ու կորսընցուր անոնք։
12 Բայց սկիզբէն իմ թագաւորս Աստուած է, որ փրկութիւններ կ'ընէ երկրին մէջ։
13 Դուն քու զօրութեամբդ ծովը պատառեցիր, վիշապներուն գլուխները ջուրերուն մէջ փշրեցիր։
14 Դուն ջարդեցիր Լեւիաթանին գլուխները. անիկայ կերակուր ըլլալու տուիր անապատին մէջի ժողովուրդին։
15 Դուն ճեղքեցիր աղբիւրը ու վտակը, դուն չորցուցիր մշտնջենաւոր գետերը։
16 Քուկդ է ցորեկը, և քուկդ է գիշերը. լոյսը ու արեւը դուն պատրաստեցիր։
17 Դուն հաստատեցիր երկրին ամէն սահմանները. ամառը ու ձմեռը դուն ստեղծեցիր։
18 Յիշէ ասիկայ՝ որ թշնամին նախատինք տուաւ Տէրոջը, ու յիմար ժողովուրդը քու անունդ անարգեց։
19 Մի՛ մատներ գազանին քու տատրակիդ անձը. մի՛ մոռնար յաւիտեան քու աղքատներուդ կեանքը։
20 Նայէ քու ուխտիդ, ինչու որ երկրին խաւար տեղուանքը բռնութեան բնակարաններով լցուած են։
21 Թող խեղճը ետ չդառնայ ամօթով. թող աղքատը ու տնանկը օրհնեն քու անունդ։
22 Ելի՛ր ով Աստուած, քու դատդ պաշտպանէ. յիշէ ան նախատինքը՝ որ անզգամը ամէն օր քեզի կ'ընէ։
23 Մի մոռնար քու թշնամիներուդ ձայնը. քեզի դէմ ոտք ելլողներուն խռովութիւնը ամէն ժամանակ կը բարձրանայ։

Սաղ. լէ. 38։ Սաղ. լթ. 6։ Յոբ. ի. 8։ Սաղ. գ. 5։ Ես. իթ. 7, 8։ Կամ՝ որ թշնամին ... Սաղ. հբ. 65։ Հմր. ձ։ Սաղ. դբ. 6։ Առակ. ը. 2։ Սաղ. լբ. 8։ Ես. ծբ. 8։ Փիլ. գ. 8։ Սաղ. ձգ. 2։ ճժթ. 81. 82։ Սաղ. ժզ. 5։ ճժթ. 57։ Սաղ. ճժթ. 155։ Ես. ըդ. 15։ Թա. ժե. 39։ Յակ. դ. 4։ Եբր. ժ. 22։ Սաղ. ճե. 22։ ճժբ. 17։
Սաղ. խդ. 9, 23։ Կ 1, 10։ 7։ Երեմ. լա. 37։ 24։ Բ Օր. իթ. 20։ Սաղ. գե 7։ ճ. 3։ Ես. ժե. 16։ Բ Օր. թ. 29։ Բ Օր. լբ. 9։ Երեմ. ժ. 16։ Ողբ. բ. 7։ Դան. գ. 27։
Բ Թագ. գ. 18. 29. 32. 35։ Բ Թագ. իե. 9։ Սաղ. հթ. 39։ Սաղ. ձգ. 4։ Ա Թագ. գ. 1։ Ամով. ը. 11։ Ողբ. բ. 3։ Սաղ. խդ. 4։ Ել. ժդ. 21։ Ես. ծա. 9, 10։ Եզեկ. իթ. 3։ լբ. 2։ Յոբ. ժգ. 9։ Սաղ. հբ. 9։ Ել. ժէ. 5, 6։ Թուոց. ի. 11։ Սաղ. ճե. 41։ Ես. խը. 21։ Յես. գ. 13։ Ծն. ա. 14։ Գործ. ժէ. 26։ Ծն. ը. 22։ Հմր 22։ Յայտ. ժգ. 19։ Սաղ. լթ. 8։ Երգ. բ. 14։ Սաղ. կը. 10։ Կամ՝ ժողովը։ Ծն. ժէ. 7, 8։ Ղև. իզ. 44, 45։ Սաղ. ճզ. 45։ Երեմ. լգ. 21։ Հմր 18։ Սաղ. ձթ. 51։

## ՍԱՂՄ. ՀԵ

1 Մարգարէն զԱստուած կը գովաբանէ. 2 կը խոստանայ արդարութեամբ դատաստան տեսնել. 4 հպարտը կը յանդիմանէ՝ Աստուծոյ նախախնամութիւնը յիշեցնելով. 9 զԱստուած կը գովէ, ու կը խոստանայ որ արդարութիւն 'ի գործ դնէ ։

ա Սաղ. ծէ. ին վերնագիրը ։

Գլխաւոր երգեցողին. աԱլ Թաշհէթ, Ասափին Սաղմոսը ու երգը ։

1 Կը գովենք քեզ՝ ով Աստուած, կը գովենք, և քու անունդ մօտ է. քու հրաշքներդ կը պատմուին ։

2 Երբոր որոշեալ ժամանակ ունենամ, ուղիղ դատաստան պիտի տեսնեմ ։

3 Երկիրը՝ ու անոր բոլոր բնակիչները մաշեցան. անոր սիւները ես կը հաստատեմ ։ (Սելայ ։)

4 Ըսի հպարտներուն թէ՝ Հպարտութիւն մի՛ ընէք. ու ամբարիշտներուն թէ՝ բԵղջիւր մի՛ վերցնէք ։

բ Զաք. ա. 21 ։

5 Ձեր եղջիւրները վեր մի՛ վերցնէք. ամբարտաւան պարանոցով մի խօսիք ։

6 Ինչու որ բարձրանալը ո՛չ արեւելքէն է, և ո՛չ արեւմուտքէն՝ ո՛չ ալ անապատէն.

գ Սաղ. ծ. 6 ։ ծը. 11 ։ Փ. Թագ. բ. 7 ։ Դան. բ. 21 ։

7 Հապա գդատաւորը Աստուած է. դմէկը կը ցածցնէ, ու միւսը կը բարձրացնէ ։

դ Յոբ. խա. 20 ։ Սաղ. կ. 3 ։ Երեմ. իե. 15 ։ Յայտ. ժդ. 10 ։ ժզ. 19 ։

8 Ինչու որ եՏէրոջը ձեռքը բաժակ կայ, ու գինին կարմիր է. անիկայ զխառնուածքով լեցուն է, ու անկէ կը թափէ. և իրաւ երկրին բոլոր ամբարիշտները էանոր մրուրները քամելով պիտի խմեն ։

ե Սաղ. հգ. 10 ։ զԱռակ. իդ. 30 ։

9 Բայց ես յաւիտեան պիտի պատմեմ. Յակոբին Աստուծոյն սաղմոս պիտի երգեմ ։

է Սաղ. ճա. 8 ։ Երեմ. խը. 25 ։

10 Ու էամբարիշտներուն բոլոր եղջիւրները պիտի փշրեմ. ըարդարին եղջիւրները պիտի բարձրանան ։

ը Սաղ. ձթ. 17 ։ ճխը. 14 ։

## ՍԱՂՄ. ՀԶ

1 Աստուծոյ վեհափառութիւնը եկեղեցւոյ մէջ ։ 11 Անոր յորդանօք ծառայելու համար յորդորանք մը ։

Գլխաւոր երգեցողին, Նկինօթի վըրայ. Ասափին Սաղմոսը ու երգը ։

ա Սաղ. խը. 1, 2 ։

1 աԱստուած Յուդայի մէջ ճանչցուած է. անոր անունը Իսրայէլի մէջ մեծ է ։

2 Ու անոր խորանը Սաղէմին մէջն է, և անոր բնակարանը Սիոնին մէջն է ։

3 բԱն տեղը ջարդեց աղեղին նետերը, վահանը, սուրը ու պատերազմը ։ (Սելայ ։)

բ Սաղ. խզ. 9 ։ Եզեկ. լթ. 9 ։

4 Դուն լուսափայլ ես. գյափշտակութեան լեռներէն աւելի գերազանց ես ։

գ Եզեկ. լը. 12, 13 ։ լթ. 4 ։

5 Սրտով զօրաւորները յափշտակուեցան, դքուներնին քնացան. ու բոլոր զօրեղ մարդիկները ձեռքերնին չգտան ։

դ Սաղ. ժդ. Տ ։ Երեմ. ծա. 39 ։

6 Ո՛վ Յակոբին Աստուածը՝ եքու յանդիմանելէդ կառքը ու ձին անզգայ պառկեցան ։

ե Ել. ժե. 1, 21 ։ Եզեկ. լթ. 20 ։ Նաւ. բ. 13 ։ Զաք. ժբ. 4 ։

7 Դուն զՏէր, դուն ահաւոր ես, և ո՞վ կրնայ կայնիլ քու առջիդ՝ քու բարկութեանդ ատենը ։

զ Նաւ. ա. 6 ։

8 էԴուն երկինքէն լսել տուիր դատաստանը. ըերկիրը վախցաւ ու լռեց,

է Եզեկ. լը. 20 ։ ը Բ Մն. ի. 29, 30 ։

9 Երբոր Աստուած թդատաստան ընելու ելաւ՝ որ երկրին բոլոր *հեզերը փրկէ ։ (Սելայ ։)

թ Սաղ. թ. 7, 8, 9 ։ հբ. 4 ։
* Կամ՝ խեղճերը

10 ժԻրաւցընէ մարդուն բարկութիւնը քեզ պիտի գովէ. ու մնացած բարկութիւնը դուն պիտի զսպես ։

ժ Տեա Ել. թ. 16 ։ ժը. 11 ։ Սաղ. կե. 7 ։

11 ԺաՈ՛ւխտ ըրէք, ու կատարեցէք ձեր Տէր Աստուծոյն. ժբանոր բոլորտիքը եղողներուն ամէնը թող ընծաներ բերեն Ահաւորին ։

ժա Ժող. ե. 4, 5, 6 ։ ժբ Բ Մն. լբ. 22, 23 ։ Սաղ. կը. 29 ։ ձթ. 7 ։

12 Ինքը իշխաններուն հոգին պիտի կտրէ. ժգահաւոր է երկրի թագաւորներուն ։

ժգ Սաղ. կը. 35 ։

## ՍԱՂՄ. ՀԷ

1 Սաղմոսերգուն կը յայտնէ թէ ո՛րչափ սաստիկ պատերազմ ունեցաւ թերահաւատութեան դէմ, 10 և թէ Աստուծոյ մեծ ու շնորհալի գործքերուն վրայ մտածելով՝ ինչպէս յաղթող գտնուեցաւ ։

Գլխաւոր երգեցողին, աՅդիթունին վրայ. Ասափին Սաղմոսը ։

ա Սաղ. լթ. և կբ. ին վերնագիրները ։

1 բԻմ ձայնս Աստուծոյ է, ու ես կ'աղաղակեմ. իմ ձայնս Աստուծոյ է, ու ան ինծի պիտի լսէ ։

բ Սաղ. գ. 4 ։

2 գԻմ նեղութեանս օրը դՏէրը փնտռեցի. գիշերը տարածուած էր իմ ձեռքս, ու չէր թուլնար. իմ անձս մխիթարուիլ չէր ուզեր ։

գ Սաղ. ծ. 15 ։ դ Ես. իզ. 9, 16 ։

3 Աստուած յիշեցի, ու անհանգիստ եղայ. խորհեցայ, ու եիմ հոգիս մարեցաւ ։ (Սելայ ։)

ե Սաղ. ճխբ. 3 ։ ճխգ. 4 ։

4 Իմ աչքերս արթուն պահեցիր. խռովեցայ ու չկրցայ խօսիլ ։

5 զՄիտքս բերի առջի օրերը, հին ժամանակներուն տարիները ։

զ Օր. լբ. 7 ։ Սաղ. ճխգ. 5 ։ Ես. ծա. 9 ։

6 Գիշերուան մէջ կը յիշեմ էիմ երգս, ըիմ սրտիս հետ կը խօսիմ, ու իմ հոգիս քննութիւն կ'ընէ ։

է Սաղ. խբ. 8 ։ ը Սաղ. դ. 4 ։

7 թԱրդեօք Տէրը յաւիտեան պիտի մերժէ՞, ու ալ ժբնաւ պիտի չհաճի՞ ։

թ Սաղ. հդ. 1 ։ ժ Սաղ. ձե. 1 ։

8 Միթէ անոր ողորմութիւնը բոլորովին պակսեցա՞ւ, ու ժաիր խոստմունքը վերջացա՞ւ ազգէ մինչեւ ազգ ։

ժա Հռով. թ. 6 ։

9 Միթէ Աստուած ժբողորմութիւն ընելը մոռցա՞ւ, միթէ բարկութիւնով արգիլե՞ց իր ողորմութիւնը ։ (Սելայ ։)

ժբ Ես. խթ. 15 ։

10 Ուստի ըսի. Աս է իմ տկարութիւնս, «Բարձրելոյն աջ ձեռքին փոփոխութիւնը»։
11 Տէրոջը գործքերը պիտի յիշեմ. յիրաւի քու առջի հրաշքներդ պիտի յիշեմ։
12 Բոլոր գործքերուդ վրայ պիտի խորհիմ, ու քու ըրածներուդ վրայ պիտի մտածեմ։
13 Ո՛վ Աստուած՝ քու ճամբադ սրբութեան մէջ է. Աստուծոյ պէս մեծ Աստուած ո՞վ կայ։
14 Հրաշքներ ընող Աստուածը դուն ես. քու զօրութիւնդ ժողովուրդներուն մէջը ցուցուցիր։
15 Քու բազուկովդ փրկեցիր քու ժողովուրդդ՝ Յակոբին ու Յովսէփին որդիները։ (Սէլա՛յ։)
16 Ջուրերը քեզ տեսան՝ ո՛վ Աստուած, ջուրերը քեզ տեսան ու դողացին. անդունդներն ալ սարսափեցան։
17 Ամպերը ջուր թափեցին. երկինքները ձայն հանեցին. նետերդ ալ գացին։
18 Քու որոտմունքիդ ձայնը երկինքն էր. փայլակները լոյս տուին աշխարհքին. երկիրը սասանեցաւ ու դողաց։
19 Քու ճանապարհդ ծովուն մէջն է, և քու ճամբադ մեծ ջուրերուն մէջն է. ու քու շաւիղներդ չեն գիտցուիր։
20 Հօտի պէս քու ժողովուրդդ առաջնորդեցիր, Մովսէսին ու Ահարոնին ձեռքովը։

## ՍԱՂՄ. ՀԸ

1 Աստուծոյ օրէնքը սորվելու ու քարոզելու յորդորանք մը։ 9 Աստուծոյ բարկութիւնը անհաւատներուն ու անշնորհակալներուն դէմ։ 67 Աստուած Իսրայէլացիները մերժելով կ'ընտրէ Յուդան, Սիոնը ու Դաւիթը։

Երգ Ասափայ։

1 Ո՛վ իմ ժողովուրդս՝ մտիկ ըրէք իմ օրէնքս, խոնարհեցուցէք ձեր ականջը իմ բերնիս խօսքերուն։
2 Առակով պիտի բանամ իմ բերանս, ու հին ժամանակի խրթնաբանութիւնները պիտի խօսիմ,
3 Որոնք լսեցինք ու գիտցանք, և մեր հայրերը մեզի պատմեցին։
4 Մենք պիտի չպահենք անոնց որդիներէն. Ետքի եկող ազգին պիտի պատմենք Տէրոջը գովութիւնները, ու անոր զօրութիւնը, և անոր ըրած հրաշքները։
5 Վասն զի վկայութիւն հաստատեց Յակոբին մէջ, ու օրէնք դրաւ Իսրայէլին մէջ, որոնք պատուիրեց մեր հայրերուն, որ սորվեցընեն իրենց որդւոցը։

ա Սաղ. լա. 22։
* Կամ՝ «Ասոր Բարձրելոյն աջ ձեռքին տարիները պիտի յիշեմ»։
բ Սաղ. ճխգ. 5։
գ Ել. ժե. 11։
դ Ել. զ. 6։ բ Օր. թ. 29։
ե Ել. ժդ. 21։ Յես. գ. 15, 16։ Սաղ. ճժդ. 3։ Ամբ. գ. 8, 15։
զ բ Թագ. իբ. 15։ Ամբ. գ. 11։
† Կամ՝ մրրիկի մէջ
է Սաղ. ղէ. 4։
ը բ Թագ. իբ. 8։
թ Ամբ. գ. 15։
ժ Ել. ժդ. 29։
ի Ել. ժգ. 21։ ժդ. 19։ Սաղ. ձը. 52։ Ձ. 1։ Ես. կգ. 11, 12։ Ովս. ժբ. 13։
ա Սաղ. հդ. ին վերնագիրը։
բ Ես. ծա. 4։
‡ Կամ՝ վարդապետութիւնս։
գ Սաղ. խթ. 4։ Մատթ. ժգ. 35։
դ Սաղ. խդ. 1։
ե բ Օր. դ. 9։ զ. 7։ Յովէլ. ա. 3։
զ Ել. ժբ. 26, 27։ ժգ. 8, 14։ Յես. դ. 6, 7։
է Սաղ. ճժէ. 19։
ը բ Օր. դ. 9։ զ. 7։ ժա. 19։

6 Որպէս զի գալու ազգը՝ ծնելու տղաքը անոնք իմանան, ու ելլեն իրենց որդւոցը պատմեն.
7 Անոնք ալ իրենց յոյսը Աստուծոյ վրայ դնելով՝ չմոռնան Աստուծոյ գործքերը, հապա անոր պատուիրանքները պահեն.
8 Ու իրենց հայրերուն պէս կամակոր ու ապստամբ ազգ մը չըլլան, անանկ ազգ մը՝ որ իրենց սիրտը չեն շիտկած, ու իրենց հոգին հաւատարիմ չէ Աստուծոյ վրայ։
9 Եփրեմի որդիքը՝ որ սպառազինեալ աղեղնաւորներ էին, պատերազմին օրը ետ դարձան.
10 Աստուծոյ ուխտը չպահեցին ու անոր օրէնքին համեմատ չուզեցին քալել.
11 Ու մոռցան անոր գործքերը, և անոր հրաշքները որ իրենց ցուցուցեր էր։
12 Անոնց հայրերուն առջին հրաշքներ ըրաւ, Եգիպտոսի երկրին՝ Տայանիսի դաշտին մէջ։
13 Ծովը պատռեց, ու անոնք անցուց. և ջուրերն ալ դէզի պէս կանգնեցուց։
14 Ու ցորեկը ամպով առաջնորդեց անոնց, և բոլոր գիշերը կրակի լուսով։
15 Վէմերը պատռեց անապատին մէջ, ու խմցուց անոնց իբր թէ մեծ անդունդէ մը։
16 Եւ առուներ հանեց վէմէն, ու ջուրերը գետերու պէս բղխեցուց։
17 Բայց անոնք նորէն մեղքերնին աւելցուցին անոր դէմ, ու բարկացուցին Բարձրեալը անապատին մէջ.
18 Եւ իրենց սրտերուն մէջ զԱստուած փորձեցին, կերակուր ուզելով իրենց անձերուն համար.
19 Եւ Աստուծոյ դէմ խօսեցան ու ըսին. Միթէ կարո՞ղ է Աստուած անապատին մէջ սեղան պատրաստելու.
20 Ահա՛ վէմին զարկաւ, ու ջուրերը դուրս բղխեցին, ու առուներ վազեցին. արդեօք հաց ալ կրնա՞յ տալ. արդեօք միս կը պատրաստէ իր ժողովուրդին համար։
21 Ուստի Տէրը լսեց ու բարկացաւ. և կրակ բորբոքեցաւ Յակոբին մէջ, ու նաև բարկութիւն ելաւ Իսրայէլին վրայ.
22 Վասն զի Աստուծոյ չհաւատացին, ու յոյսերնին անոր փրկութեանը վրայ չդրին.
23 Թէպէտ ինքը վերէն հրաման ըրեր էր ամպերուն, ու երկինքին դռները բացեր էր,
24 Եւ կերակուրի համար անոնց

թ Սաղ. ճբ. 15։
ժ դ Թագ. ժէ. 14։ Եզեկ. ի. 18։
ի Ել. լբ. 9։ լգ. 3։ լդ. 9։ բ Օր. թ. 6, 13։ լա. 27։ Սաղ. կը. 6։ Հմր 37։ բ Մն. ի. 33։
լ դ Թագ. ժէ. 15։
խ Սաղ. ճզ. 13։
ծ Ել. է. ը. թ. ժ. և ժբ։
կ Ծն. լբ. 3։ Թուոց ժգ. 23։ Հմր 43։ Ես. ժթ. 11, 13։ Եզեկ. լ. 14։
հ Ել. ժդ. 21։
ձ Ել. ժե. 8։ Սաղ. լգ. 7։
ղ Ել. ժգ. 21։ ժդ. 24։ Սաղ. ճե. 39։
ճ Ել. ժէ. 6։ Թուոց ի. 11։ Սաղ. ճե. 41։ ա Կոր. ժ. 4։
մ բ Օր. թ. 21։ Սաղ. ճե. 41։
յ բ Օր. թ. 22։ Սաղ. ղե. 8։ Եբր. գ. 16։
ն Ել. ժզ. 2։
շ Թուոց ժա. 4։
ո Ել. ժէ. 6։ Թուոց ի. 11։
չ Թուոց ժա. 1, 10։
պ Եբր. գ. 18։ Յուդ. 5։
ջ Ծն. է. 11։ Մաղ. գ. 10։
ռ Ել. ժզ. 4, 14։ Սաղ. ճե. 40։ Յովհ. զ. 31։ ա Կոր. ժ. 3։

վրայ մանանայ տեղացեր էր , ու
երկինքի ցորենը տուեր էր ա-
նոնց ,
25 *Մարդիկ հրեշտակներուն հացը
կերան" . կշտանալու չափ պաշար
խրկեց անոնց ։
26 Երկինքի մէջ արեւելեան հովը
հանեց , և իր զօրութեամբը հարա-
ւային հովը բերաւ .
27 Եւ անոնց վրայ փոշիի պէս միս
տեղաց , ու ծովու աւազին չափ
թեւաւոր թռչուններ ,
28 Եւ անոնց բանակին մէջը՝ անոնց
վրաններուն չորս կողմը իջեցուց ։
29 Ու կերան , և աղէկ կշտացան .
ու իրենց ցանկութիւնը իրենց
տուաւ .
30 Իրենց ցանկութիւնէն զուրկ չը-
մնացին . քանի որ իրենց կերա-
կուրը իրենց բերանն էր ,
31 Աստուծոյ բարկութիւնը անոնց
վրայ բորբոքեցաւ , ու սպաննեց ա-
նոնց պարարտներէն , ու գետինը
զարկաւ Իսրայէլին ընտիրները ։
32 Աս բոլոր բաներուն վրայ նորէն
մեղանչեցին , ու չհաւատացին ա-
նոր հրաշքներուն ։
33 Եւ ունայնութեան մէջ սպա-
ռեց անոնց օրերը , և ահի մէջ՝ ա-
նոնց տարիները .
34 Երբոր կը սպաննէր անոնք ,
զինքը կը խնդրէին . ու ետ կը
դառնային , և զԱստուած կանուխ
կը փնտռէին ,
35 Ու կը յիշէին որ Աստուած ի-
րենց վէմն էր . և Բարձրեալ Աս-
տուածը իրենց Փրկիչն էր ,
36 Սակայն իրենց բերնովը կեղ-
ծաւորութիւն կ'ընէին անոր , ու
իրենց լեզուովը սուտ կը խօսէին
անոր .
37 Եւ իրենց սիրտը ուղիղ չէր ա-
նոր առջեւ . ու հաւատարիմ չէին
անոր ուխտին մէջ ։
38 Բայց ինքը ողորմած ըլլալով՝
անոնց անօրէնութիւնը կը քաւէր .
ու չէր կորսնցըներ զանոնք . և շատ
անգամ կը դարձընէր իր բարկու-
թիւնը . ու չէր բորբոքեցըներ իր
բոլոր սրտմտութիւնը .
39 Ինչու որ կը յիշէր թէ անոնք
մարմին են . հովի մը պէս՝ որ կ'եր-
թայ ու ետ չդառնար .
40 Քանի անգամ զանիկայ սրդողե-
ցուցին անապատին մէջ . ու բար-
կացուցին անիկայ անջուր տեղին
մէջ .
41 Եւ դարձան Աստուած փորձե-
ցին . ու Իսրայէլին Սուրբը նեղա-
ցուցին .
42 Չյիշեցին անոր ձեռքը . ան
օրը որ զիրենք թշնամիէն փրկեց .
43 Եւ թէ ինչպէս իր նշանները ը-
րաւ Եգիպտոսին մէջ , ու իր հրաշք-
ները Տայանիսի դաշտին մէջ .
44 Ու արիւն դարձուց անոնց գե-
տերը , և անոնց առուները , որ չը-
կրցան խմել .
45 Շանաճանճեր խրկեց անոնց
վրայ , որ կերան զանոնք , ու գոր-
տեր՝ որ ապականեցին զանոնք .
46 Ու անոնց բերքը թրթուրին
տուաւ , և անոնց վաստակը մա-
րախին .
47 Անոնց որթերը փճացուց կար-
կուտով , ու անոնց ժանտաթզե-
նիները խոշոր կարկուտով .
48 Եւ անոնց անասունները կար-
կուտին մատնեց , ու անոնց հօտե-
րը կայծակին ։
49 Իր սաստիկ բարկութիւնը խըր-
կեց անոնց վրայ , սրտմտութիւն ,
ու բարկութիւն , ու նեղութիւն ,
†չար հրեշտակները խրկելով ։
50 Իր բարկութեանը ճամբայ բա-
ցաւ . անոնց անձը մահուանէ չը-
խնայեց . հապա անոնց ‡կեանքը
ժանտախտի մատնեց .
51 Ու ամէն անդրանիկը սպաննեց
Եգիպտոսի մէջ , առջինեկները
Քամի վրաններուն մէջ .
52 Ու իր ժողովուրդը ոչխարներու
պէս հանեց , ու զանոնք հօտի պէս
վարեց անապատին մէջը .
53 Եւ անոնց ապահովութեամբ
առաջնորդեց , ու չվախցան . իսկ
անոնց թշնամիները ծովը ծած-
կեց .
54 Ու զանոնք տարաւ իր սրբու-
թեան սահմանը , ան լեռը՝ որն որ
իր աջ ձեռքը ստացեր էր .
55 Ու անոնց առջեւէն ազգեր վը-
ռընտեց , և չափով ժառանգու-
թիւն բաժնեց անոնց , ու Իսրայէ-
լին ցեղերը անոնց վրաններուն մէ-
ջը բնակեցուց ։
56 Բայց անոնք փորձեցին ու սըր-
դողեցուցին Բարձրեալ Աստուածը ,
ու չպահեցին անոր վկայութիւն-
ները .
57 Եւ իրենց հայրերուն պէս ետ
դարձան ու նենգութիւն ըրին ,
խաբեբայ աղեղի պէս խոտորե-
ցան .
58 Ինչու որ զանիկայ սրդողեցու-
ցին իրենց բարձր տեղերովը , ու
նախանձի շարժեցին զանիկայ ի-
րենց կուռքերովը .
59 Աստուած լսեց ու բարկացաւ , և
շատ անարգեց Իսրայէլը .
60 Ու Սելովի խորանը մերժեց , ան
վրանը որ մարդոց մէջը կանգներ
էր .
61 Եւ իր զօրութիւնը գերու-
թեան մատնեց . ու իր փառքը
թշնամիներուն ձեռքը .

* Կամ՝ Անոնց ամէն մէկը ազնուականներուն հացը կերան .
Թուոց . ԺԱ . 31 ։
Թուոց . ԺԱ . 20 ։
Թուոց . ԺԱ . 33 ։
Թուոց . ԺԴ . ԺԶ . ԺԷ ։ Հմր 22 ։
Թուոց . ԺԴ . 29 , 35 ։ ԻԶ . 64 , 65 ։
Տես Ովս . Ե . 15 ։
Բ Օր . ԼԲ . 4 , 15 , 31 ։
Ել . ԺԵ . 13 ։ Բ Օր . Է . 8 ։ Ես . ԽԱ . 14 ։ ԽԳ . 6 ։ ԿԳ . 9 ։
Եզեկ . ԼԳ . 31 ։
Հմր 8 ։
Թուոց ԺԴ . 18 , 20 ։
Ես . ԽԸ . 9 ։
Գ Թագ . ԻԱ . 29 ։
Սաղ . ԾԳ . 14 , 16 ։
Ծն . Զ . 3 ։ Յոհ . Գ . 6 ։
Յոբ Է . 7 . 16 ։ Յակ . Դ . 14 ։
Հմր 17 ։ Սաղ . ՂԵ . 9 , 10 ։ Ես . Է . 13 ։ ԿԳ . 10 ։ Եփես . Դ . 30 ։ Եբր . Գ . 16 , 17 ։
Թուոց ԺԴ . 22 ։ Բ Օր . Զ . 16 ։
Հմր 20 ։
Հմր 12 ։ Սաղ . ՃԵ . 27 , ․․․

Ել . Է . 20 ։ Սաղ . ՃԵ . 29 ։
Ել . Ը . 24 ։ Սաղ . ՃԵ . 31 ։
Ել . Ը . 6 ։ Սաղ . ՃԵ . 30 ։
Ել . Ժ . 13 , 15 ։ Սաղ . ՃԵ . 34 , 35 ։
Ել . Թ . 23 , 25 ։ Սաղ . ՃԵ . 33 ։
Ել . Թ . 23 , 24 , 25 ։ Սաղ . ՃԵ . 32 ։
† Կամ՝ չարիքներու
‡ Կամ՝ անասունները . Ել . Թ . 3 , 6 ։
Ել . ԺԲ . 29 ։ Սաղ . ՃԵ . 36 ։ ՃԼԶ . 10 ։
Սաղ . ՃԶ . 22 ։
Սաղ . ՀԷ . 20 ։
Ել . ԺԴ . 19 , 20 ։
Ել . ԺԴ . 27 , 28 ։ ԺԵ . 10 ։
Ել . ԺԵ . 17 ։
Սաղ . ԽԴ . 3 ։
Սաղ . ԽԴ . 2 ։
Յես . ԺԳ . 7 ։ ԺԹ . 51 ։ Սաղ . ՃԼԵ . 21 , 22 ։
Դատ . Բ . 11 , 12 ։
Հմր 41 ։ Եզեկ . Ի . 27 , 28 ։
Ովս . Է . 16 ։
Բ Օր . ԼԲ . 16 , 21 ։ Դատ . Բ . 12 , 20 ։ Եզեկ . Ի . 28 ։
Բ Օր . ԺԲ . 2 , 4 ։ Գ Թագ . ԺԱ . 7 ։ ԺԲ . 31 ։
Ա Թագ . Դ . 11 ։ Երեմ . Է . 12 , 14 ։ ԻԶ . 6 , 9 ։
Դատ . ԺԸ . 30 ։
Կամ՝ անոր

62 Եւ իր ժողովուրդը սուրի մատնեց, ու իր ժառանգութեանը վրայ բարկացաւ։
63 Անոր երիտասարդները կրակը կերաւ. ու անոր *աղջիկները սուգ չըրին"։
64 Անոր քահանաները սրով ինկան. ու անոր որբեւարիները չլացին։
65 Բայց Տէրը արթընցաւ՝ որպէս թէ քունէն, գինիէն սթափած զօրաւոր մարդու մը պէս,
66 Ու իր թշնամիները ետեւնուն զարկաւ. յաւիտենական նախատինք տուաւ անոնց։
67 Եւ Յովսէփին վրանը մերժեց, ու Եփրեմին ցեղը չընտրեց.
68 Հապա Յուդային ցեղը ընտրեց, Սիոն լեռը՝ որն որ սիրեց.
69 Եւ իր սրբարանը շինեց բարձր բլուրներու պէս, երկրին պէս՝ որ յաւիտեան հաստատեց։
70 Ու իր Դաւիթ ծառան ընտրեց, և զանիկայ ոչխարի փարախներէն առաւ.
71 Ծծիծ տուող ոչխարներուն ետեւէն բերաւ զանիկայ, որ իր Յակոբ ժողովուրդը ու իր Իսրայէլ ժառանգութիւնը հովուէ։
72 Անիկայ ալ հովուեց զանոնք իր սրտին անմեղութեամբը. ու իր ձեռքերուն յաջողակութեամբը առաջնորդեց անոնց։

## ՍԱՂՄ · ՀԹ

1 Սաղմոսերգուն Երուսաղէմին աւերմանը վրայով կը գանգատի. 8 ազատութեան համար աղօթք կ'ընէ. 13 ու կը խոստանայ գոհութիւն մատուցանել։

Սաղմոս Ասափայ։

1 Ո՛վ Աստուած՝ հեթանոսները քու ժառանգութեանդ մէջը մտան. քու սուրբ տաճարդ պղծեցին. Երուսաղէմը աւերակներու դարձուցին։
2 Քու ծառաներուդ դիերը երկինքի թռչուններուն կերակուր տուին, քու սուրբերուդ մարմինը երկրի գազաններուն։
3 Անոնց արիւնը ջուրի պէս թափեցին Երուսաղէմին բոլորտիքը, ու մէկը չկար որ զանոնք թաղէր։
4 Մեր դրացիներուն նախատինք եղանք, ծաղր ու կատակ՝ մեր բոլորտիքը եղողներուն։
5 Մինչև ե՞րբ՝ ո՛վ Տէր. միշտ պիտի բարկանա՞ս. քու նախանձդ կրակի պէս պիտի բորբոքի՞։
6 Թափէ՛ քու բարկութիւնդ այն ազգերուն վրայ՝ որ քեզ չեն ճանչնար, ու այն թագաւորութիւններուն վրայ՝ որ քու անունդ չեն կանչեր։
7 Ինչու որ Յակոբը կերան, ու անոր բնակութիւնը աւերակ դարձուցին։
8 Մի՛ յիշեր մեզի դէմ առջի անօրէնութիւնները. թող շուտով հասնի մեզի քու ողորմութիւններդ. ինչու որ խիստ թշուառացանք։
9 Քու անուանդ փառքին համար օգնէ՛ մեզի՝ ո՛վ մեր փրկութեան Աստուածը, և քու անուանդ համար փրկէ՛ մեզ, ու մեր մեղքերը քաւէ։
10 Ինչո՞ւ ըսեն հեթանոսները թէ, Ո՞ւր է անոնց Աստուածը. թող յայտնուի հեթանոսաց մէջ մեր աչքերուն առջևը քու ծառաներուդ թափուած արիւնին վրէժը։
11 Կապուածին հառաչանքը քու առջի՛դ թող ելլէ. քու զօրութեանդ մեծութիւնովը մահուան մատնուածները ապրեցո՛ւր.
12 Ու եօթնպատիկ հատուցո՛ւմ ըրէ մեր դրացիներուն իրենց ծոցին մէջը՝ այն իրենց նախատինքին փոխարէնը, որով քեզ անարգեցին՝ ո՛վ Տէր։
13 Բայց մենք քու ժողովուրդդ ու քու արօտիդ ոչխարները՝ յաւիտեան քեզ պիտի գովենք, քու փառքդ պիտի պատմենք ազգէ մինչև ազգ։

## ՍԱՂՄ · Ձ

1 Սաղմոսերգուն իր աղօթքին մէջը՝ եկեղեցիին դժբաղդութիւններուն վրայով. 8 և Աստուծոյ առջի շնորհքները դատաստաններու փոխուելուն վրայով կը գանգատի. 14 ազատութեան համար աղօթք կ'ընէ։

Գլխաւոր երգեցողին, Շօշանիմ էտութին վրայ. Ասափին Սաղմոսը։

1 Ականջ դի՛ր՝ ո՛վ Իսրայէլին Հովիւը, որ Յովսէփին՝ հօտի պէս կ'առաջնորդես. Քրովբէից վրայ կը նստիս, լուսաւորէ՛ մեզ.
2 Եփրեմին ու Բենիամինին և Մանասէին առջին արթընցուր քու զօրութիւնդ, ու եկուր մեզ փրկելու։
3 Ո՛վ Աստուած՝ մեզ դարձուր, և քու երեսդ փայլեցուր, ու պիտի փրկուինք։
4 Ո՛վ Տէր՝ զօրաց Աստուածը, մինչև ե՞րբ կը բարկանաս քու ժողովուրդիդ աղօթքին դէմ։
5 Արտասուքի հաց կը կերցընես անոնց, ու մեծ չափով արտասուք կը խմցընես անոնց։
6 Մեզ կռուի պատճառ կ'ընես մեր դրացիներուն, ու մեր թշնամիները մեզ ծաղր կ'ընեն իրենց մէջը։
7 Ո՛վ զօրաց Աստուածը՝ մեզ

ա Թագ. դ. 10։
* Կամ՝ աղջիկներուն համար սուգ ընող չկար։
ա Թագ. դ. 11։ իբ. 18։
Յոբ. իէ. 15։ Եզեկ. իդ. 23։
Սաղ. խդ. 23։
Ես. խբ. 13։
ա Թագ. ե. 6, 12։ զ. 4։
Սաղ. ձէ. 2։
գ Թագ. զ։
ա Թագ. ժզ. 11, 12։ բ Թագ. է. 8։
Ծն. լգ. 13։ Ես. խ. 11։
բ Թագ. ե. 2։ ա Մն. ժա. 2։
գ Թագ. թ. 4։
Ել. ժե. 17։ Սաղ. հգ. 2։
Սաղ. հգ. 7։
դ Թագ. իե. 9, 10։ բ Մն. լզ. 19։ Միք. գ. 12։
Երեմ. է. 33։ ժդ. 4։ լգ. 20։
Սաղ. ճխա. 7։ Երեմ. ժդ. 16։ ժզ. 4։ Յայտ. ժա. 9։
Սաղ. խդ. 13։ ձ. 6։
Սաղ. հդ. 1, 9, 10։ ձե. 5։ ձթ. 46։
Սոփ. ա. 18։ գ. 8։
Երեմ. ժ. 25։ Յայտ. ժզ. 1։
Ես. խե. 4, 5։ բ Թես. ա. 8։
Սաղ. ծգ. 4։

Ես. կդ. 9։
բ Օր. իբ. 43։ Սաղ. ճխբ. 6։
բ Մն. ժդ. 11։ Երեմ. ժդ. 7, 21։
Սաղ. խբ. 10։ ճժե. 2։
Սաղ. ճբ. 20։
Ծն. դ. 15։ Ես. կե. 6, 7։ Երեմ. լբ. 18։ Ղուկ. զ. 38։
Սաղ. հդ. 18, 22։
Սաղ. հգ. 1։ ղե. 7։ ճ. 3։
Ես. խգ. 21։
Սաղ. խե. և կթ. ին վերնագիրները։
Սաղ. հէ. 20։
Ել. իե. 20, 22։ ա Թագ. դ. 4։ բ Թագ. զ. 2։ Սաղ. ղթ. 1։
բ Օր. լգ. 2։ Սաղ. ծ. 2։ զգ. 1։
Թւ. բ. 18-23։
Ղ. Հմր 7, 19։ Ողբ. ե. 21։
Թւ. ղ. 25։ Սաղ. դ. 6։ կէ. 1։
Սաղ. խբ. 3։ ճբ. 9։ Ես. լ. 20։
Սաղ. խդ. 13։ հթ. 4։
Ղ. Հմր 3, 19։

դարձո՛ւր, և քու երեսդ փայլեցո՛ւր, ու պիտի փրկուինք ։
8 Եգիպտոսէն էմէկ որթ մը փոխադրեցիր, ւհեթանոսները վռընտեցիր, ու զանիկայ տնկեցիր ։
9 էԱնոր առջևէն տեղ պատրաստեցիր, ու անոր արմատները հաստատեցիր. և անիկայ երկիրը լեցուց ։
10 Լեռները ծածկուեցան անոր հովանիովը, ու անոր ճիւղերը Աստուծոյ եղևիններուն պէս եղան ։
11 Իր ճիւղերը երկրնցուց մինչև ծովը, ու իր բողբոջները ծ մինչև գետը ։
12 Ինչու զփլցուցիր անոր ցանկերը, որ ճամբայէն բոլոր անցնողները անիկայ փրցընեն ։
13 Անտառին խոզը ապականեց անիկայ, ու դաշտի գազանները կերան անիկայ ։
14 Ո՛վ զօրաց Աստուածը՝ կ'աղաչեմ դարձիր. հնայէ՛ երկինքէն ու տե՛ս, ու այցելէ՛ այս որթին,
15 Եւ աս տունկին՝ որ քու աջ ձեռքովդ տնկեցիր, ու որդիին՝ որ յքեզի համար հաստատեցիր ։
16 Կրակով այրուած ու կտրուած է. ղքու երեսիդ սաստէն կը կորնչին ։
17 եԹող քու ձեռքդ քու աջ ձեռքիդ մարդուն վրայ ըլլայ, ու մարդու որդիին վրայ՝ որն որ քեզի համար հաստատեցիր ։
18 Մենք ալ ետ պիտի չդառնանք քեզմէ. կենդանացո՛ւր մեզ, ու քու անունդ պիտի կանչենք ։
19 Ո՛վ Տէր՝ զօրաց Աստուածը, ճմեզ դարձո՛ւր, և քու երեսդ փայլեցո՛ւր, ու պիտի փրկուինք ։

ԱՍաղ. ե. 1։ 7։ Երեմ. բ. 21։ Եզեկ. ժե. 6։ ժէ. 6։ ժթ. 10։
ւՍաղ. խդ. 2։ հը. 55։
էԵւ. իգ. 28։ Յես. իդ. 12։
ծՍաղ. հբ. 8։
զՍաղ. ձթ. 40։ 41։ Ես. ե. 5։ Նաւ. բ. 2։
հԵս. կգ. 15։
յԵս. խթ. 5։
ղՍաղ. լթ. 11։ հզ. 7։
եՍաղ. ձթ. 21։
ճՀմր 3։ 7։

## ՍԱՂՄ. ՁԱ

1 Հանդիսաւոր կերպով զԱստուած գովաբանելու յորդորանք մը ։ 4 Աստուած կը պահանջէ աս պարտաւորութիւնը իր բրած բարիքներուն համար ։ 8 Աստուած հնազանդութեան յորդորելով ժողովուրդը, կը գանգատի անոնց անհնազանդութենէն՝ որ իրենց վնասին պատճառ կ'ըլլայ ։

Գլխաւոր երգեցողին, ակիթթիթի վրայ. Ասափին Սաղմոսը ։

1 Ցնծացէ՛ք Աստուծոյ առջին, որ մեր զօրութիւնն է, ուրախութեամբ աղաղակեցէ՛ք Յակոբին Աստուծոյն ։
2 Սաղմոս առէք, ու թմբուկը բերէ՛ք. նաև անուշ քնարը տաւիղին հետ ։
3 Փո՛ղ հնչեցուցէ՛ք ամսու գլխուն, *նաև լուսնի լրման ատենը" մեր տօնին օրը.
4 Վասն զի ԲԱասիկայ Իսրայէլին կանոն մըն է, Յակոբին Աստուծոյն իրաւունքն է ։
5 Ինքը վկայութիւն դրաւ ասիկայ Յովսեփին մէջը, Եգիպտոսի երկրին վրայ ելած ատենը. գուր տեղ լեզու մը լսեցի որ չէի գիտեր ։
6 ԴԱնոր թիկունքը հեռացուցի բեռէն, անոր ձեռքերը համդչեցան եկողովէն ։
7 ղՆեղութեան մէջ կանչեցիր, ու քեզ փրկեցի. էպատասխան տուի քեզի որոտման ծածկոցին մէջէն. ըփորձեցի քեզ Մերիպայի ջուրին քովը ։ (Սէլայ ։)
8 ԲԼսէ՛ ո՛վ իմ ժողովուրդս, ու վկայեմ քեզի. ո՛վ Իսրայէլ՝ թէ որ ինծի մտիկ ընես.
9 ծՕտար Աստուած չըլլայ քու մէջդ, ու օտար Աստուծոյ երկրպագութիւն չընես ։
10 էԵս եմ քու Տէր Աստուածդ, որ հանեցի քեզ Եգիպտոսի երկրէն. ւլայն բաց քու բերանդ, ու զանիկայ ես պիտի լեցընեմ ։
11 Բայց իմ ժողովուրդս մտիկ չըրաւ իմ ձայնս. ու Իսրայէլը էիս չուզեց ։
12 ծՈւստի զանոնք իրենց սրտին կամակորութեանը թողուցի, որ իրենց խորհուրդներուն համեմատ քալեն ։
13 զԵրանի թէ իմ ժողովուրդս ինծի մտիկ ընէր, ու Իսրայէլը իմ ճամբաներուս մէջը քալէր.
14 Շուտով պիտի խոնարհեցընէի անոնց թշնամիները, ու ձեռքս պիտի դարձընէի անոնց նեղիչներուն վրայ ։
15 հՏէրը ատողները †խոնարհութիւն պիտի ընէին" իրեն, ու անոնց ժամանակը յաւիտեան պիտի ըլլար ։
16 Ան յպիտի կերակրէր զանոնք պարարտ ցորենով. ու ղվէմէն ելած մեղրով քեզ պիտի կշտացընէի ։

## ՍԱՂՄ. ՁԲ

1 Սաղմոսերգուն դատաւորները յորդորելէն, 5 ու անոնց անհոգութիւնը յանդիմանելէն ետև, 8 Աստուծմէ կը խնդրէ որ ինքը դատաստան ընէ ։

Սաղմոս Ասափայ ։

1 Աստուած ականգնած է Աստուծոյ ժողովքին մէջը, ‡աստուածներուն մէջը դատաստան կը տեսնէ ։
2 Մինչև ե՞րբ անիրաւութեամբ պիտի դատէք, ու ամբարիշտներուն Բաչառութիւն պիտի ընէք ։ (Սէլայ ։)
3 Դատաստան ըրէք աղքատին ու որբին. գխեղճին ու չքաւորին իրաւունք ըրէք ։
4 ԴՓրկեցէ՛ք աղքատը ու տնանկը, ամբարիշտներուն ձեռքէն ազատեցէ՛ք զանոնք ։
5 եՉեն իմանար ու միտք չեն առ–

աՍաղ. ը. ին վերնագիրը ։
*Կամ՝ որոշուած ժամանակին
ԲՂև. իգ. 24։ Թուէ. ժ. 10։
գՍաղ. ճժգ. 1։
ԴԵս. թ. 4։ ժ. 27։
էԵւ. ա. 14։
ղԵւ. բ. 23։ ժդ. 10։ Սաղ. ծ. 15։
էԵւ. ժթ. 19։
ըԵւ. ժէ. 6։ 7։ Թուէ. ի. 13։
ԲՍաղ. ծ. 7։
ծԵւ. ի. 3։ 5։ բՕր. լբ. 12։ Ես. խգ. 12։
էԵւ. ի. 2։
ւՍաղ. լէ. 3։ 4։ Յով. ժե. 7։ Եփե. գ. 20։
էԵւ. լբ. 1։ բՕր. լբ. 15։ 18։
ծԳոր. է. 42։ ժդ. 15։ Հռով. ա. 24։ 26։
զբՕր. ե. 29։ ժ. 12։ 13։ լբ. 29։ Ես. խը. 18։
հՍաղ. ժը. 45։ Հռով. ա. 30։
†Եբր. պիտի ստէին
յբՕր. լբ. 13։ 14։ Սաղ. ճխէ. 14։
ղՅոբ. իթ. 6։
աբՄն. ժթ. 6։ Ժող. ե. 8։
‡Կամ՝ դատաւորներուն. Ել. իա. 6։ իբ. 28։
ԲբՕր. ա. 17։ բՄն. ժթ. 7։ Առակ. ժը. 5։
գԵրեմ. իբ. 3։
ԴՅոբ. իթ. 12։ Առակ. իդ. 11։
եՄիք. գ. 1։

ներ . խաւարի մէջ կը պտըտին . Երկրին բոլոր հիմերը շարժեցան ։
6 Ես ըսի թէ՝ Դուք աստուածներ էք, ու դուք ամէնքդ Բարձրելոյն որդիներն էք .
7 Բայց մարդոց պէս պիտի մեռնիք, ու իշխաններէն մէկուն պէս պիտի իյնաք ։
8 Ելի՛ր ով Աստուած՝ դատէ՛ երկիրը . Քանզի որ բոլոր ազգերը դուն պիտի ժառանգես ։

## ՍԱՂՄ . ՁԳ

1 Թշնամիներուն դաւաճանութեանը համար գանգատ մը . 9 ու Եկեղեցիին նեղութիւն տուողներուն դէմ աղօթք մը ։

Ասափին երգը — Սաղմոսը ։

1 Ո՛վ Աստուած՝ լուռ մի՛ կենար . անձայն մի՛ ըլլար, ու հանդարտ մի՛ կենար ո՛վ Աստուած ։
2 Քանզի ահա քու թշնամիներդ կը գոռան, ու քեզ ատողները գլուխ կը վերցընեն .
3 Խորամանկութեամբ չար կը դնեն քու ժողովուրդիդ դէմ, ու խորհուրդ կ'ընեն քու պահպանածներուդ դէմ ։
4 Կ'ըսեն թէ՝ Եկէ՛ք, կորսընցընենք զանոնք՝ որ ազգ չըլլան, ու ալ չյիշուի Իսրայէլին անունը ։
5 Քանզի որ միաբան սրտով խորհուրդ բրին, — քեզի դէմ դաշնակցութիւն բրին
6 Եդոմի վրանները ու Իսմայելացիք, Մովաբը ու Հագարացիք,
7 Գեբաղը ու Ամմոնը և Ամաղէկը, Փղշտացիք՝ Տիւրոսի բնակչացը հետ ։
8 Նաև Ասուրը անոնց հետ միաբանեցաւ . Ղովտին որդւոցը ձեռնտու եղան ։ (Սէլայ ։)
9 Ըրէ՛ անոնց ինչպէս Մադիամին՝ ինչպէս Սիսարային ու Յաբինին Կիսոն հեղեղատին քով .
10 Անոնք Ենդովրի մէջ սատկեցան . Աղբի պէս եղան երկրի վրայ ։
11 Անոնց իշխանները Օրեբին ու Զեբին պէս, ու անոնց բոլոր իշխանները Զեբէէին ու Սաղմանային պէս ըրէ .
12 Որոնք ըսին թէ՝ Աստուծոյ բնակարանները մենք ժառանգենք մեզի համար ։
13 Ո՛վ իմ Աստուածս՝ անոնք *մրրիկի պէս, հովի առջև եղող յարդի պէս ըրէ ։
14 Ինչպէս որ կրակը անտառը կ'այրէ, ու բոցը լեռները կը բռընկցընէ,
15 Անանկ ալ հալածէ՛ զանոնք քու մրրիկովդ, ու խռովութեան մէջ ձգէ զանոնք քու փոթորիկովդ ։
16 Լեցուր անոնց երեսները անարգանքով, որ քու անունդ խնդրեն՝ ով Տէր ։
17 Թող ամչնան ու խռովին յաւիտեան, և ամօթալից ըլլան ու կորսուին .
18 Որ գիտնան թէ միայն դուն՝ որ քու անունդ Եհովայ է, Բարձրեալ ես բոլոր երկրի վրայ ։

ա Սաղ. ժա. 3 ; Ծն. 3 ;
բ Յովհ. ժ. 34 ;
գ Յոբ. իա. 32 ; Սաղ. խթ. 12 ; Եզեկ. լա. 14 ;
դ Սաղ. ղ. 8 ; Յայտ. ժա. 15 ;
ա Սաղ. իը. 1 ; լե. 22 ; ծթ. 1 ;
բ Սաղ. բ. 1 ; Գործ. դ. 25 ;
գ Սաղ. ձա. 15 ;
դ Սաղ. իէ. 5 ; լա. 20 ;
ե Տես Եսթ. գ. 6, 9 ; Երեմ. ժա. 19 ; լա. 36 ;
զ Տես Բ Մն. ի. 1, 10, 11 ;
է Թուոց. լա. 7 ; Դատ. է. 22 ;
ը Դատ. դ. 15, 24 ; ե. 21 ;
թ Դ Թագ. թ. 37 ; Սոփ. ա. 17 ;
ժ Դատ. է. 25 ;
ի Դատ. ը. 12, 21 ;
լ Ես. ժէ. 13, 14 ;
* Կամ՝ անիւի
խ Սաղ. լե. 5 ;
ծ Բ Օր. լբ. 22 ;
կ Յոբ. թ. 17 ;
հ Սաղ. լե. 4, 26 ;
ձ Սաղ. ծթ. 13 ;
ղ Ել. զ. 3 ;
ճ Սաղ. զբ. 8 ;

## ՍԱՂՄ . ՁԴ

1 Մարգարէն սրբարանին հաղորդակցութեանը փափաքելով՝ 4 կը ցուցնէ թէ ո՛րչափ երանելի են անոր մէջը բնակողները . 8 իր հոն դառնալուն համար աղօթք կ'ընէ ։

Գլխաւոր երգեցողին, Գիթթիթի վրայ . Կորխի որդւոցը Սաղմոսը ։

1 Ի՛նչպէս սիրելի են քու բնակարաններդ, ո՛վ զօրաց Տէրը ։
2 Իմ անձս կը փափաքի ու նաև կը մարի Տէրոջը սրահներուն համար . իմ սիրտս ու մարմինս ցնծութեամբ կ'աղաղակեն կենդանի Աստուծոյն ։
3 Ճնճղուկն ալ տուն գտաւ, ու ծիծեռնիկը իրեն բոյն՝ իր ձագերը դնելու համար, քու սեղաններուդ քովը՝ ո՛վ զօրաց Տէրը, իմ Թագաւորս ու Աստուածս ։
4 Երանի անոնց որ քու տանդ մէջ կը բնակին . անոնք անդադար քեզ պիտի օրհնեն ։ (Սէլայ ։)
5 Երանի այն մարդուն որուն զօրութիւնը քեզմէ է . ու իրենց սրտին մէջը քու ճամբաներդ կան ։
6 Արտասուաց հովիտէն անցնելով աղբիւրի պէս կ'ընեն անիկայ . առջի անձրեւն ալ օրհնութիւնով պիտի ծածկէ զանիկայ ։
7 Անոնք զօրութենէ զօրութիւն կ'երթան, մինչև որ Սիոնի մէջ Աստուծոյ առջին երեւնան ։
8 Ո՛վ Տէր՝ զօրաց Աստուածը, լսէ՛ իմ աղօթքս . ականջ դի՛ր ո՛վ Յակոբին Աստուածը ։ (Սէլայ ։)
9 Ո՛վ մեր վահանը Աստուած՝ տե՛ս, ու քու օծեալիդ երեսը նայէ ։
10 Քանզի որ քու սրահներուդ մէջը մէկ օրը հազարէն աղէկ է . աւելի ընտրեցի իմ Աստուծոյս տանը շեմին վրայ կենալ, քան թէ ամբարշտաց վրաններուն մէջը բնակիլ ։
11 Քանզի Տէր Աստուած Արեւ ու վահան է . Տէրը շնորհք ու փառք պիտի տայ . բարութիւն մը պիտի չպակսեցընէ ուղղութեամբ քալողներէն ։
12 Ո՛վ զօրաց Տէրը՝ երանելի է քեզի յուսացող մարդը ։

ա Սաղ. ը. ին վերնագիրը ;
բ Սաղ. իէ. 4 ;
գ Սաղ. խբ. 1, 2 ; կգ. 1 ; հգ. 26 ; ճժթ. 20 ;
դ Սաղ. կե. 4 ;
ե Բ Թագ. ե. 22, 23 ;
* Կամ՝ աւազանները կը լեցնէ ;
զ Առակ. դ. 18 ; Բ Կոր. գ. 18 ;
է Բ Օր. ժզ. 16 ; Զաք. ժդ. 16 ;
ը Ծն. ժե. 1 ; Հռ. 11 ;
թ Ես. կ. 19 ; Ծն. ժե. 1 ; Հռ. 9 ; Սաղ. ճժե. 9, 10, 11 ; ճժթ. 114 ; Առակ. բ. 7 ;
ժ Սաղ. լդ. 9, 10 ;
ի Սաղ. բ. 12 ;

## ՍԱՂՄ . ՁԵ

1 Սաղմոսերգուն Աստուծոյ առջի շնորհքները յիշելով՝ կը խնդրէ որ անոր շնորհքները շարու-

նակութն . Տ կը խոստանայ անոնց սպասելու՝
Աստուծոյ բարութեանը յուսալով ։

Գլխաւոր երգեցողին . ᵃԿորխի որդւոցը Սաղմոսը ։

1 Ո՛վ Տէր՝ դուն հաճեցար քու
երկրիդ . ᵇՅակոբին գերութիւ-
նը դարձուցիր .
2 ᶜՔու ժողովուրդիդ անօրէնու-
թիւնը ներեցիր . անոնց բոլոր մեղ-
քերը ծածկեցիր ։ ( Սէլա՛ ։ )
3 Հեռացուցիր քու բոլոր սրտմը-
տութիւնդ . ᵈԴեռ դարձար քու
սաստիկ բարկութենէդ ։
4 *Մեզի՛ դարձիր" ով մեր փրկու-
թեան Աստուածը , և քու բար-
կութիւնդ որ մեր վրայ է՝ դադրե-
ցո՛ւր ։
5 ᵉՄիթէ յաւիտեան պիտի բար-
կանա՞ս մեզի . քու բարկութիւնդ
ազգէ մինչև ազգ պիտի երկընցը-
նե՞ս ։
6 Միթէ դուն պիտի չդառնա՞ս , ու
մեզ կենդանացընես , որ քու ժողո-
վուրդդ քեզմով ուրախ ըլլայ ։
7 Ցուցո՛ւր մեզի՝ ո՛վ Տէր , քու ո-
ղորմութիւնդ . և քու փրկութիւնդ
մեզի տո՛ւր ։
8 ᶠՊիտի լսեմ ինչ որ կը խօսի Տէր
Աստուած . ինչու որ ᵍխաղաղու-
թիւն պիտի խօսի իր ժողովուրդին
ու իր սուրբերուն . ու ʰյիմարու-
թեան չդառնան անոնք ։
9 Արդարև ⁱիր փրկութիւնը մօտ է
իրմէն վախցողներուն , ʲոր մեր երկ-
րին մէջը փառք բնակի ։
10 Ողորմութիւնը ու ճշմարտու-
թիւնը իրարու պատահեցան . ᵏար-
դարութիւնը ու խաղաղութիւնը
իրար համբուրեցին ։
11 ˡՃշմարտութիւնը երկրէն պիտի
բուսնի , ու արդարութիւնը եր-
կինքէն վար պիտի նայի ։
12 Նաև ᵐՏէրը բարութիւն պիտի
տայ , ու ⁿմեր երկիրը իր պտուղը
պիտի տայ ։
13 ᵒԱրդարութիւնը անոր առջևէն
պիտի երթայ . ու ᵖիր դնացքները
ճամբու" պիտի դնէ ։

## ՍԱՂՄ . ՁԶ

1 Դաւիթ իր հաւատքին վստահութիւնովը , 5
և Աստուծոյ բարութիւնը ու կարողութիւնը
յիշելով՝ իր աղօթքը կը զօրացընէ . 11 առջի
շնորհքին շարունակութեանը կը ցանկայ . 14
հպարտներուն համար գանգատ ընելով՝ Աս-
տուծոյ բարութեանը մէկ նշանը կը խնդրէ ։

Աղօթք Դաւթի ։

1 Ո՛վ Տէր՝ խոնարհեցո՛ւր քու ա-
կանջդ . պատասխան տուր ին-
ծի , ինչու որ աղքատ ու տնանկ
եմ ։
2 Պահէ՛ իմ անձս , ինչու որ ես
սուրբ եմ . ո՛վ իմ Աստուածս՝
ᵃքեզի յուսացող ծառադ դուն
փրկէ՛ ։
3 ᵇՈղորմէ՛ ինծի՛ ով Տէր , ինչու որ
քեզի կը կանչեմ ամէն օր ։
4 Ուրախացո՛ւր քու ծառայիդ ան-
ձը՝ ᶜինչու որ դէպ ՚ի քեզի կը վեր-
ցընեմ իմ անձս՝ ով Տէր ։
5 ᵈՎասն զի դուն՝ ով Տէր , բարի
ու ներող ես , և խիստ ողորմած ան
ամենուն՝ որ քեզի կը կանչեն ։
6 Ականջ դիր իմ աղօթքիս՝ ով
Տէր , ու մտիկ ըրէ իմ աղաչանքնե-
րուս ձայնը ։
7 ᵉՆեղութեանս օրը քեզի կ՚աղա-
ղակեմ , ինչու որ դուն ինծի կը
պատասխանես ։
8 ᶠԱստուածներուն մէջը քեզի նը-
ման մէկը չկայ՝ ով Տէր , և ᵍքու
գործքերուդ պէս չկայ ։
9 ʰԲոլոր ազգերը՝ որ դուն ստեղ-
ծեցիր , պիտի գան , ու երկրպա-
գութիւն ընեն քու առջիդ՝ ով
Տէր , և քու անուանդ փառք պի-
տի տան ։
10 Վասն զի դուն մեծ ու ⁱհրաշք-
ներ գործող ես , ʲԱստուած մինակ
դուն ես ։
11 ᵏՈ՛վ Տէր՝ սորվեցո՛ւր ինծի քու
ճամբադ , որ քու ճշմարտութեանդ
մէջ քալեմ . ˡմիացո՛ւր իմ սիրտս",
որ քու անունէդ վախնայ ։
12 Իմ բոլոր սրտովս քեզ պիտի գո-
վեմ՝ ով Տէր՝ իմ Աստուածս , ու
յաւիտեան պիտի փառաւորեմ քու
անունդ ։
13 Ինչու որ քու ողորմութիւնդ մեծ
եղաւ իմ վրաս . ու դուն ᵐփրկե-
ցիր իմ անձս խորունկ դժոխքէն ։
14 Ո՛վ Աստուած՝ ⁿամբարտաւան-
ները ինծի դէմ ելան , ու բռնաւոր-
ներուն ժողովքը իմ անձս փնտռե-
ցին , և քեզ իրենց առջևը չդրին ։
15 ᵒԲայց դուն ով Տէր՝ գթած ու
ողորմած Աստուած ես , երկայնա-
միտ ու ողորմութիւնով և ճշմար-
տութիւնով առատ ես ։
16 ᵖՆայէ՛ ինծի , ու ողորմէ՛ ինծի .
քու զօրութիւնդ տուր քու ծառա-
յիդ , ու ᑫքու աղախինիդ որդին
փրկէ՛ ։
17 Բարութեան նշան մը ըրէ ինծի ,
որ իս ատողները տեսնեն ու ամըչ-
նան . ինչու որ դուն՝ ով Տէր , ին-
ծի օգնեցիր ու զիս մխիթարեցիր ։

## ՍԱՂՄ . ՁԷ

1 Եկեղեցիին բնութիւնը ու փառքը . 4 անոր
անդամներուն աւելնալը . պատիւը ու մխիթա-
րութիւնը ։

Կորխի որդւոցը Սաղմոսը — երգը ։

1 Անոր հիմերը ᵃսուրբ լեռներուն
վրայ են ։
2 ᵇՏէրը Սիոնին դռները Յակոբին

ᵃ Սաղ . խբ . ին վերնագիրը ։
ᵇ Եզր . ա . 11 ։ բ . 1 ։ Սաղ . ժդ . 7 ։ Երեմ . Լ . 18 ։ լա . 23 ։ Եզեկ . լթ . 25 ։ Յովել . գ . 1 ։
ᶜ Սաղ . լբ . 1 ։
ᵈ Բ Օր . ժգ . 17 ։
* Կամ՝ Մեզ դարձո՛ւր . Սաղ . ձ . 7 ։
ᵉ Սաղ . հդ . 1 ։ հթ . 5 ։ ձ . 4 ։
ᶠ Ամբ . բ . 1 ։
ᵍ Զաք . թ . 10 ։
ʰ Բ Պետ . բ . 20 ։ 21 ։
ⁱ Ես . խզ . 13 ։
ʲ Զաք . բ . 5 ։ Յովհ . ա . 14 ։
ᵏ Սաղ . հբ . 3 ։ Ես . լբ . 17 ։ Ղուկ . բ . 14 ։
ˡ Ես . խե . Տ ։
ᵐ Յակ . ա . 17 ։ Սաղ . ձդ . 11 ։
ⁿ Սաղ . կէ . 6 ։
ᵒ Սաղ . ձթ . 14 ։
ᵖ Կամ՝ Դնէ իր քայլերուն ճամբուն մէջ

ᵃ Ես . իզ . 3 ։
ᵇ Սաղ . ծզ . 1 ։ ծէ . 1 ։
ᶜ Սաղ . իե . 1 ։ ճխգ . 8 ։
ᵈ Յոէլ . բ . 13 ։ Սաղ . ճւ . 7 ։ ճիէ . 9 ։ Յովէլ . բ . 13 ։
ᵉ Սաղ . ծ . 15 ։
ᶠ Ել . ժե . 11 ։ Սաղ . ձթ . 6 ։
ᵍ Բ Օր . գ . 24 ։
ʰ Սաղ . իբ . 31 ։ Յայտ . ժե . 4 ։
ⁱ Ել . ժե . 11 ։ Սաղ . հբ . 18 ։
ʲ Բ Օր . զ . 4 ։ լբ . 39 ։ Ես . լէ . 16 ։ խդ . 6 ։ Մար . ժբ . 29 ։ Ա Կոր . ը . 4 ։ Եփե . դ . 6 ։
ᵏ Սաղ . իե . 4 ։ իէ . 11 ։ ճժթ . 33 ։
ˡ Կամ՝ իմ սիրտս պիտի ուրախանայ ,
ᵐ Սաղ . ծզ . 13 ։
ⁿ Սաղ . ծդ . 3 ։
ᵒ Ել . լդ . 6 ։ Թուոց . ժդ . 18 ։ Նեեմ . թ . 17 ։ Սաղ . ճդ . 8 ։
ᵖ Սաղ . իե . 16 ։
ᑫ Սաղ . ճժզ . 16 ։

ᵃ Սաղ . խը . 1 ։
ᵇ Սաղ . հը . 67 . 68 ։

բոլոր բնակարաններէն աւելի կը սիրէ։

3 Փառաւոր բաներ կը պատմուին քեզի համար, ո՛վ Աստուծոյ քաղաքը։ (Սէլայ։)

4 Ռահաբը ու Բաբելոնը պիտի յիշեմ իմ ճանչցողներուն. ահա Փղշտացւոց երկիրը ու Տիւրոսը Եթովպիային հետ. ասոնք հոն ծնան։

5 Ու Սիոնին համար պիտի ըսուի թէ՝ Աս մարդը ու ան մարդը հոն ծնաւ. և Բարձրեալը ինքը պիտի հաստատէ զանիկայ։

6 Տէրը ազգերը գրած ժամանակը պիտի ըսէ՝ թէ ասիկայ հոն ծնաւ։ (Սէլայ։)

7 Ու երգեցողներ, նոյնպէս ալ սրնգահարներ ‖ պիտի գտնուին հոն. իմ բոլոր աղբիւրներս քեզմէ են։

Տես Ես. կ։ — Սաղ. ձԹ. 10։ Ես. ծա. 9։ — * Եբ՝ Եգիպտոսը։ — † Կամ՝ ճանչցողներու պէս. — Եզեկ. ժգ. 9։ — ‡ Կամ՝ պարողներ — ‖ Կամ՝ պիտի ըսեն.

## ՍԱՂՄ. ՁԸ

1-Տ Ծանր գանգատ մը պարունակող աղօթք մը։

Կորխի որդւոցը երգը ու Սաղմոսը. Գլխաւոր երգեցողին, Մահալաթ լէաննօթի վրայ. Եմման Եզրահացիին երգը։

1 Ո՛վ Տէր՝ իմ փրկութեանս Աստուածը, ցորեկը կ՚աղաղակեմ ու գիշերը քու առջիդ եմ,

2 Իմ աղօթքս քու առջի՛դ թող ելլէ. խոնարհեցո՛ւր քու ականջդ իմ աղաղակիս։

3 Ինչու որ իմ անձս չարիքներով լեցուեցաւ, ու իմ կեանքս գերեզմանին մօտեցաւ։

4 Գուբը իջնողներուն հետ սեպուեցայ. Ոյժ չունեցող մարդու մը պէս եղայ։

5 Մեռելներուն մէջը ինկած եմ. գերեզմանի մէջ պառկող մեռցուածներուն պէս, որոնք ալ չես յիշեր, ու քու ձեռքէդ մերժուած են։

6 Դուն զիս ամենէն խորունկ գուբին մէջը դրիր, խաւարային անդունդներուն մէջ։

7 Քու սրտմտութիւնդ ծանրացաւ իմ վրաս, և քու բոլոր ալիքներովդ զիս չարչարեցիր։ (Սէլայ։)

8 Իմ ճանչւորներս ինծմէ հեռացուցիր. զիս գարշելի ըրիր անոնց առջին. գոցուեցայ, ու դուրս չեմ ելլեր։

9 Չարչարանքէն աչքերս վատեցան. Ամէն օր քեզի աղաղակեցի՝ ո՛վ Տէր, ձեռքերս քեզի երկնցուցի։

10 Միթէ մեռելներո՞ւն հրաշք պիտի ընես. միթէ մեռածնե՞րը պիտի ելլեն ու քեզ գովեն։ (Սէլայ։)

գ Թագ. դ. 31։ ա Մն. բ. 6։ — Սաղ. իէ. 9։ ծա. 14։ — Ղու. ժը. 7։ — Սաղ. ճէ. 18։ — Սաղ. իը. 1։ — Սաղ. լա. 12։ — Ես. ծգ. 8։ — Սաղ. խբ. 7։ — Յոբ. ժԹ. 13, 19։ Սաղ. լա. 11։ ճխր. 4։ — Ողբ. գ. 7։ — Սաղ. լը. 10։ — Սաղ. ձզ. 8։ — Յոբ. ժա. 13։ Սաղ. ճխդ. 6։ — Սաղ. զ. 5։ լ. 9։ ճժե. 17։ ճժը. 17։ Ես. լը. 18։

11 Միթէ կը պատմուի՞ քու ողորմութիւնդ գերեզմանին մէջ, ու քու ճշմարտութիւնդ կորստեան մէջ։

12 Միթէ կը ճանչցուի՞ն քու հրաշքներդ խաւարին մէջ, ու քու արդարութիւնդ՝ մոռացման երկրին մէջ։

13 Բայց ես՝ ո՛վ Տէր, քեզի աղաղակեցի, ու իմ աղօթքս առտուանց քու առջիդ պիտի ելլէ։

14 Ո՛վ Տէր՝ ինչո՞ւ իմ անձս կը մերժես, ու քու երեսդ կը ծածկես ինծմէ։

15 Ես խեղճ եմ ու մանկութենէս ի վեր մեռնելու վրայ եմ. քու ահերդ քաշեցի ու խռովեցայ։

16 Քու սրտմտութիւնդ իմ վրաս իջաւ, ու քու զարհուրանքներդ զիս կորսնցուցին։

17 Ամէն օր ջուրի պէս զիս պատեցին. մէկտեղ չորս կողմս առին։

18 Հեռացուցիր ինծմէ սիրելին ու բարեկամը. իմ ճանչւորներս խաւարի մէջ են։

Յոբ. ժ. 21։ Սաղ. ծիդ. 3։ — Սաղ. լա. 12։ Հմր 5։ Ժող. ը. 10։ Թ. 5։ — Սաղ. ե. 3։ ճժԹ. 147։ — Սաղ. խգ. 2։ — Յոբ. ժգ. 24։ Սաղ. ժդ. 1։ — Յոբ. զ. 4։ — Սաղ. իբ. 16։ — Յոբ. ժԹ. 13։ Սաղ. լա. 11։ լը. 11։

## ՍԱՂՄ. ՁԹ

1 Սաղմոսերգուն զԱստուած կը գովէ իր ուխտին համար, 5 իր հրաշալի կարողութեանը համար, 15 իր եկեղեցիին հոգ տանելուն համար, 19 ու Դաւիթին թագաւորութեանը ըրած շնորհքին համար։ 38 Երբը ձախող դիպուածներու վրայով կը գանգատի, 46 կը բողոքէ, կ՚աղօթէ, ու զԱստուած կ՚օրհնէ։

Եթան Եզրահացիին երգը։

1 Տէրոջը ողորմութիւնները յաւիտեան պիտի երգեմ. քու հաւատարմութիւնդ իմ բերնովս ազգէ ազգ պիտի պատմեմ։

2 Վասն զի ըսի թէ՝ Ողորմութիւնը յաւիտեան պիտի շինուի. երկինքի մէջ պիտի հաստատես քու հաւատարմութիւնդ։

3 Ես իմ ընտրեալիս հետ ուխտ ըրի, իմ Դաւիթ ծառայիս երդում ըրի, ըսելով.

4 Քու սերունդդ յաւիտեան պիտի հաստատեմ, և ազգէ ազգ պիտի շինեմ քու աթոռդ։ (Սէլայ։)

5 Երկինքն ալ կը փառաւորէ քու հրաշքներդ՝ ո՛վ Տէր, և քու հաւատարմութիւնդ սուրբերուն ժողովքին մէջ։

6 Վասն զի ո՞վ կայ երկինքի մէջ Տէրոջը հաւասար. ու § զօրաց որդիներուն մէջ ո՞վ կը նմանի Տէրոջը։

7 Աստուած խիստ զարհուրելի է սուրբերուն ժողովքին մէջը, և ահաւոր է ամէն իր բոլորտիքը եղողներուն։

8 Ո՛վ Տէր՝ զօրաց Աստուածը, ո՞վ է քեզի պէս հզօր Տէր. որ

գ Թագ. դ. 31։ ա Մն. բ. 6։ — Սաղ. ճա. 1։ — Հմր 4։ Սաղ. ճժԹ. 90։ — Սաղ. ճժԹ. 89։ — գ Թագ. ը. 16։ Ես. խբ. 1։ — բ Թագ. է. 11, 12։ ա Մն. ժէ. 10, 12։ Տես Երեմ. լ. 9։ Եզեկ. լդ. 23։ Ովս. գ. 5։ — Հմր 29, 36։ — Տես Հմր 1։ Ղու. ա. 32, 33։ — Սաղ. ժԹ. 1։ զէ. 6։ Յայտ. է. 10, 11, 12։ — Հմր 7։ — Սաղ. խ. 5։ հա. 19։ ձզ. 8։ ճժգ. 5։ — § Կամ՝ աստուածոց — Սաղ. հզ. 7, 11։ — Ել. ժե. 11։ ա Թագ. բ. 2։ Սաղ. յե. 10։ հա. 19։

քու հաւատարմութիւնդ քու բո-
լորտիքդ է ։
9 ծ Դուն կը տիրես ծովուն հպար-
տութեանը վրայ . երբոր անոր ա-
լիքները կը բարձրանան , դուն կը
հանդարտեցընես անոնք ։
10 կ Դուն ճնշեցիր Ռահաբը խո-
ցուածի պէս . քու զօրութեանդ
բազուկովը ցրուեցիր քու թշնա-
միներդ ։
11 հ Քուկդ է երկինքը , ու քուկդ է
երկիրը . դուն հիմնեցիր աշխարհքը
ու անոր լիութիւնը ։
12 ձ Հիւսիսը ու Հարաւը դուն ըս-
տեղծեցիր . ղ Թաբօր ու ճ Հերմոն
քու անունովդ կը ցնծան ։
13 Դուն զօրաւոր բազուկ ունիս .
քու ձեռքդ ուժով է , քու աջ
ձեռքդ բարձրացած է ։
14 մ Արդարութիւնը ու իրաւունքը
քու աթոռիդ հիմն է , յ ողորմու-
թիւնը ու ճշմարտութիւնը քու
երեսիդ առջեւէն կ՚երթան ։
15 Երանի՜ այն ժողովուրդին՝ որ գի-
տէն ն * աւետարարութեան փողերուն՝՝
ձայնը . ո՛վ Տէր՝ անոնք շ քու երե-
սիդ լուսովը պիտի քալեն ։
16 Քու անունովդ ամէն օր պիտի
ցնծան , ու քու արդարութիւնո-
վըդ պիտի բարձրանան ։
17 Վասն զի դուն ես անոնց զօրու-
թեանը փառքը , ո և քու հաճու-
թեամբդ պիտի բարձրանայ մեր
եղջիւրը ։
18 Ինչու որ մեր վահանը Տէրոջն
է , ու մեր թագաւորը Իսրայէլին
Սուրբինն է ։
19 Այն ժամանակը տեսիլքով խօսե-
ցար քու սուրբիդ հետ , ու ըսիր .
Օգնութիւն դրի զօրաւորին վրայ ,
ժողովուրդէն պ ընտրուածը բարձ-
րացուցի ։
20 ջ Իմ ծառաս Դաւիթը գտայ ,
իմ սուրբ եղովս օծեցի անիկայ ։
21 ռ Որուն հետ իմ ձեռքս պիտի
հաստատուի , ու իմ բազուկս պի-
տի զօրացընէ զանիկայ ։
22 ս Թշնամին պիտի չհարստահարէ
զանիկայ , ու անօրէնութեան որ-
դին պիտի չչարչարէ զանիկայ ։
23 վ Եւ անոր թշնամիները իր առ-
ջեւէն պիտի կոտրեմ , ու զանիկայ
ատողները պիտի զարնեմ ։
24 Եւ տ իմ հաւատարմութիւնս ու
ողորմութիւնս անոր հետ պիտի
ըլլայ . ու ր անոր եղջիւրը իմ ա-
նունովս պիտի բարձրանայ ։
25 ց Անոր ձեռքը ծովուն մէջը պիտի
դնեմ , ու՝ անոր աջ ձեռքը գետե-
րուն մէջը ։
26 ւ Անիկայ ինծի պիտի կանչէ թէ՝
Դուն ես փ իմ Հայրս , իմ Աստուա-
ծըս , ու ք իմ փրկութեանս Վէմը .
27 Ու ես զանիկայ ք անդրանիկ պի-
տի ընեմ , + Երկրի թագաւորներէն
աւելի բարձր ։
28 օ Իմ ողորմութիւնս յաւիտեան
պիտի պահեմ անոր համար , ու
ֆ իմ ուխտս անոր հետ հաստա-
տուն պիտի ըլլայ ։
29 ա Եւ անոր սերունդը յաւիտեան ,
բ ու անոր աթոռը գ երկինքի օրե-
րուն չափ պիտի ընեմ ։
30 դ Թէ որ անոր որդիքը ե իմ օ-
րէնքս թողուն , ու իմ իրաւունք-
ներովս չքալեն ,
31 Թէ որ իմ կանոններս անարգեն ,
ու իմ պատուիրանքներս չպահեն ,
32 զ Ես ալ գաւազանով պիտի
պատժեմ անոնց յանցանքը , ու
հարուածներով՝ անոնց անօրէնու-
թիւնը ։
33 է Բայց իմ ողորմութիւնս պիտի
չկտրեմ անկէ , ու իմ հաւատար-
մութիւնս սուտ պիտի չհանեմ ։
34 Իմ ուխտս պիտի չանարգեմ , ու
շրթունքներէս ելածը պիտի չփո-
խեմ ։
35 Անգամ մը երդում ըրի ը իմ
սրբութիւնովս , որ սուտ պիտի չը-
սեմ Դաւիթին .
36 թ Անոր սերունդը յաւիտեան պի-
տի մնայ , ու անոր աթոռը իմ առ-
ջիս ժ արեգակին չափ .
37 Լուսնին պէս յաւիտեան պիտի
հաստատուի , ու երկինքին մէջ հա-
ւատարիմ վկայի պէս ։ (Սէլա ։)
38 Բայց դուն ի երեսէ ձգեցիր ու
լ անարգեցիր , քու օծեալդ բար-
կացար .
39 Քու ծառայիդ ուխտը մերժե-
ցիր . խ անոր թագը գետնին հա-
ւասար պղծեցիր .
40 ծ Անոր բոլոր պարիսպները փլցու-
ցիր . անոր բերդերը աւերակ ըրիր ։
41 Բոլոր ճամբայէն անցնողները կո-
ղոպտեցին զանիկայ . կ նախատինք
եղաւ իր դրացիներուն ։
42 Անոր նեղիչներուն աջ ձեռքը
բարձրացուցիր . անոր բոլոր թըշ-
նամիները ուրախացուցիր ։
43 Անոր սուրին բերանն ալ դար-
ձուցիր , ու զինքը պատերազմին
մէջ չկայնեցուցիր ։
44 Անոր փառքը դադրեցուցիր , ու
հ անոր աթոռը գետինը զարկիր ։
45 Անոր երիտասարդութեան օրերը
կարճեցուցիր . զանիկայ ամօթով
ծածկեցիր ։ (Սէլա ։)
46 ձ Մինչեւ ե՞րբ ո՛վ Տէր . քու անձդ
միշտ պիտի պահե՞ս . ղ քու սըրտ-
մտութիւնդ կրակի պէս պիտի
բորբոքի՞ ։
47 ճ Յիշէ իմ կեանքիս ինչ ըլլալը՝
ինչ ունայնութեան համար ստեղ-
ծեցիր մարդոց բոլոր որդիները ։

ծ Սաղ. կե. 7 ։ ղգ. 3 ։ 4 ։ Ճէ. 29 ։
կ Ել. ժդ. 26 ։ 27 ։ 28 ։ Սաղ. ձէ. 4 ։ Եսա. Լ. 7 ։ ծա. 9 ։
հ Ծն. ա. 1 ։ ա Մն. իԹ. 11 ։ Սաղ. իդ. 1 ։ 2 ։ ծ. 12 ։
ձ Յոբ. իզ. 7 ։ ղ Յես. ժԹ. 22 ։
ճ Յես. ժբ. 1 ։
մ Սաղ. ղէ. 2 ։
յ Սաղ. ձե. 13 ։
ն Թուոց. ժ. 10 ։ Սաղ. ղը. 6 ։
* Կամ՝ ցնծութեան . Թուոց. իգ. 21 ։
շ Սաղ. դ. 6 ։ խդ. 3 ։
ո Հմր 24 ։ Սաղ. ձե. 10 ։ ղը. 10 ։ Ճլը. 17 ։
պ Հմր 3 ։ գ Թագ. Ժա. 34 ։
ջ ա Թագ. ժզ. 1 ։ 12 ։
ռ Սաղ. ձ. 17 ։
ս Բ Թագ. է. 13 ։
վ Բ Թագ. է. 9 ։
տ Սաղ. կա. 7 ։
ր Հմր 17 ։
ց Սաղ. հբ. 8 ։ ձ. 11 ։
ւ Բ Թագ. է. 14 ։ ա Մն. իբ. 10 ։
փ Բ Թագ. իբ. 47

ք Սաղ. բ. 7 ։ Կող. ա. 15 ։ 18 ։
+ Թուոց. իդ. 7 ։
օ Եսա. ծե. 3 ։
ֆ Հմր 34 ։
ա Հմր 4 ։ 36 ։
բ Հմր 4 ։ Եսա. Թ. 7 ։ Երեմ. լգ. 17 ։
գ Բ Օր. ժա. 21 ։
դ Բ Թագ. է. 14 ։
ե Սաղ. Ճժթ. 53 ։ Երեմ. Թ. 13 ։
զ Բ Թագ. է. 14 ։ գ Թագ. ժա. 31 ։
է Բ Թագ. է. 13 ։
ը Ամով. դ. 2 ։
թ Բ Թագ. է. 16 ։ Ղուկ. ա. 33 ։ Յովհ. ժբ. 34 ։ Հմր 4 ։ 29 ։
ժ Սաղ. հբ. 5 ։ 17 ։ Երեմ. լգ. 20 ։
ի Բ Մն. իբ. 9 ։ Սաղ. խդ. 9 ։ կ. 1 ։ 10 ։
լ Բ Օր. լբ. 19 ։ Սաղ. հը. 59 ։
խ Սաղ. հդ. 7 ։ Ողբ. ե. 16 ։
ծ Սաղ. ձ. 12 ։
կ Սաղ. խդ. 13 ։ հԹ. 4 ։
հ Հմր 39 ։
ձ Սաղ. հԹ. 5 ։
ղ Սաղ. հբ. 63 ։
ճ Յոբ. է. 7 ։ ժ. 9 ։ ժդ. 1 ։ Սաղ. լԹ. 5 ։ Ճժթ. 84 ։

ժ Սաղ. խթ. 9 ։ յ Երր. ժա. 5 ։

48 ձ Ո՛վ է ան մարդը որ ապրի ու մահ չտեսնէ, և իր անձը գժոխքին ձեռքէն փրկէ ։ (Սէլայ ։)

ն Բ Թագ. է. 15 ։ Ես. ծե. 3 ։ շ Սաղ. ծդ. 5 ։

49 Ո՛վ Տէր՝ ո՞ւր են քու առջի ողորմութիւններդ, որ ն երդում ըրիր Դաւիթին շ քու հաւատարմութիւնովդ ։

ո Սաղ. կթ. 9, 19 ։ չ Սաղ. հդ. 22 ։

50 Ո՛վ Տէր՝ յիշէ քու ծառաներուդ ո նախատինքը, որ իմ ծոցիս մէջը կը կրեմ բոլոր մեծ ազգերէն ։

51 չ Որ անով քու թշնամիներդ անարգեցին՝ ով Տէր, որ անով քու օծեալիդ քայլերը անարգեցին ։

պ Սաղ. խա. 13 ։

52 պ Օրհնեալ ըլլայ Տէրը յաւիտեան ։ Ամէն ու ամէն ։

## ՍԱՂՄ. Ղ

1 Մովսէս Աստուծոյ նախախնամութիւնը խոստովանելով՝ 3 մարդոց տկարութեանը համար, 7 Աստուծոյ պատիժներուն, 10 և մարդկային կենաց կարճութեանը համար կը գանգատի ։ 12 Անիկայ Աստուծոյ բարի նախախնամութեանը գիտութիւնը ու յայտնի երևնալուն համար կ'աղօթէ ։

ա Բ Օր. լգ. 1 ։

ա Աստուծոյ մարդուն Մովսէսին աղօթքը ։

բ Բ Օր. լգ. 27 ։ Եզեկ. ժա. 16 ։ գ Առակ. ը. 25, 26 ։

1 Ո՛վ Տէր՝ բ դուն մեզի ապաւէն եղար ազգէ մինչև ազգ ։

2 գ Լեռներուն ծնանելէն առաջ, ու երկրի և աշխարհի ստեղծուելէն առաջ, յաւիտենից մինչև յաւիտեանս դուն ես Աստուած ։

դ Ծն. գ. 19 ։ Ժող. ժբ. 7 ։ ե Բ Պետ. գ. 8 ։

3 Դուն մարդը փոշի կը դարձրնես, ու կ'ըսես. դ Ետ դարձէք՝ մարդոց որդիներ ։

4 ե Վասն զի հազար տարին քու առջիդ երէկուան օրին պէս է՝ որ անցաւ, կամ գիշերուան պահու մը պէս ։

զ Սաղ. հդ. 20 ։ է Սաղ. ճգ. 15 ։ Ես. խ. 6 ։

5 Կ'ողողես անոնք, զ երազի պէս կ'ըլլան. առտուան կանանչցած է խոտի պէս կ'ըլլան ։

ը Սաղ. դր. 7 ։ Յոբ. ժդ. 2 ։

6 է Առտուանց կը ծաղկի ու կը կանանչանայ, իրիկունը կը կտրուի ու կը չորնայ ։

7 Ինչու որ քու բարկութենէդ կը մաշինք, և քու սրտմտութենէդ կը խռովինք ։

թ Սաղ. ծ. 21 ։ Երեմ. ժզ. 17 ։ ժ Սաղ. ժթ. 12 ։

8 ը Մեր անօրէնութիւնները քու առջիդ, ու մեր թ ծածուկ մեղքերը քու երեսիդ լուսին մէջը դրիր ։

9 Ինչու որ մեր բոլոր օրերը քու բարկութիւնովդ կ'անցնին. մեր տարիները ցնորքի մը պէս կ'անցրնենք ։

10 Մեր տարիներուն օրերը եօթանասուն տարի են. ու թէ որ զօրութիւնով ութսուն տարի ըլլան, տակաւին անոնց փառքը աշխատանք ու ցաւ է. ինչու որ անոնք շուտով կ'անցնին, ու մենք կը թռչինք ։

11 Ո՞վ գիտէ քու բարկութեանդ զօրութիւնը, և քու սրտմտութիւնդ քու վախիդ համեմատ ։

ի Սաղ. լթ. 4 ։

12 ի Անանկ սորվեցուր մեզի մեր օրերը համրել, որ սրտի իմաստութիւն ստանանք ։

լ Բ Օր. լբ. 36 ։ Սաղ. ճլե. 14 ։ խ Սաղ. ձե. 6 ։ Ծխթ. 2 ։

13 Դարձիր ով Տէր, մինչև ե՞րբ. ու լ գթութիւն ըրէ քու ծառաներուդ ։

14 Կշտացո՛ւր մեզ կանուխ քու ողորմութիւնովդ, խ որ ցնծանք և ուրախ ըլլանք մեր բոլոր օրերուն մէջը ։

15 Ուրախացուր մեզ ան օրերուն չափովը, որ տրտմեցուցիր. ան տարիներուն չափովը, որ չարիք տեսանք ։

ծ Ամբ. գ. 2 ։

16 Թող երևնայ ծ քու գործքդ քու ծառաներուդ, և քու փառքդ անոնց որդիներուն ։

կ Սաղ. իէ. 4 ։ հ Ես. իզ. 12 ։

17 Ու կ մեր Տէր Աստուծոյն վայելչութիւնը մեր վրայ ըլլայ. և հ ձեռքերնուս գործքը հաստատէ մեր վրայ. մեր ձեռքերուն գործքը հաստատէ ։

## ՍԱՂՄ. ՂԱ

1 Բարեպաշտ մարդոց վիճակը. 3 անոնց ապահովութիւնը. 9 անոնց ապաստանարանը ։

ա Սաղ. իէ. 5 ։ լա. 20 ։ լբ. 7 ։ բ Սաղ. ժէ. 8 ։ գ Սաղ. ճիբ. 5 ։

1 ա Բարձրելոյն ծածկոցին տակը բնակողը բ Ամենակարողին հովանաւորութեանը տակը պիտի հանգչի ։

2 գ Տէրոջը համար պիտի ըսեմ թէ՝ իմ ապաւէնս ու իմ ամրոցս է. իմ Աստուածս՝ որուն կը յուսամ ։

դ Սաղ. ճիդ. 7 ։

3 Արդարև դ ան պիտի փրկէ քեզ որսորդին որոգայթէն, ապականիչ ժանտամահէն ։

ե Սաղ. ժէ. 8 ։ ձէ. 1 ։ կա. 4 ։

4 Քեզ ե իր փետուրներովը պիտի ծածկէ, ու իր թևերուն տակը պիտի ապաստանիս. անոր ճշմարտութիւնը վահան մը ու ասպար մը պիտի ըլլայ քեզի ։

զ Յոբ. ե. 19. 20 ։ Սաղ. ճժր. 7 ։ Ճիւ. 6 ։ Առակ. գ. 23. 24 ։ Ես. խգ. 2 ։

5 զ Պիտի չվախնաս գիշերուան զարհուրանքէն, ու ցորեկը թռչող նետէն,

6 Ո՛չ ալ մութ տեղը պտըտող ժանտամահէն, ու կէսօրուան ատենը սատակեցընող հարուածէն ։

7 Հազար հոգի քու քովէդ, ու տասը հազար քու աջ կողմդ պիտի իյնան. բայց քեզի հարուած մը պիտի չմօտենայ ։

է Սաղ. լէ. 34 ։ Մաղ. ա. 5 ։ ը Հմր 2 ։ թ Սաղ. հա. 3 ։ ղ. 1 ։ ժ Առակ. ժբ. 21 ։

8 Միայն է քու աչքերովդ պիտի նայիս, ու ամբարիշտներուն հատուցումը պիտի տեսնես ։

9 Որովհետև դուն Տէրը ը իմ ապաւէնս՝ Բարձրեալը թ քեզի ապաստանարան ըրիր,

10 ժ Քեզի չարիք պիտի չհանդիպի, և քու բնակարանիդ հարուած մը պիտի չմօտենայ ։

ի Սաղ. լդ. 7 ։ Հա. 3 ։ Մատ. դ. 6 ։ Ղու. դ. 10. 11 ։ Եբր. ա. 14 ։

11 ի Ինչու որ իր հրեշտակներուն

պիտի սպսպրէ քեզի համար, որ քու բոլոր ճամբաներուդ մէջ քեզ պահեն։

12 Անոնք ձեռքերնուն վրայ պիտի վերցընեն քեզ, որ չըլլայ թէ ոտքդ քարի զարնես։

13 Առիւծի ու իժի վրայ պիտի քալես. առիւծի կորիւնը ու վիշապը պիտի կոխկրտես։

14 Որովհետեւ ինծի կը ցանկայ, անոր համար ես պիտի փրկեմ անիկայ. անոր ամրութիւն պիտի ըլլամ, ինչու որ անիկայ իմ անունս գիտցաւ։

15 Ինծի պիտի կանչէ, ու ես անոր պատասխան պիտի տամ. նեղութեան մէջ անոր հետ պիտի ըլլամ. պիտի ապրեցընեմ ու փառաւորեմ անիկայ.

16 Երկայն օրերով պիտի կշտացընեմ անիկայ, ու իմ փրկութիւնս անոր պիտի ցուցընեմ։

ա Յոբ. ե. 23։ Սաղ. լէ. 24։
բ Սաղ. թ. 10։
գ Սաղ. ծ. 15։
դ Ես. խգ. 2։
ե Ա Թագ. բ. 30։
զ Առակ. գ. 2։

## ՍԱՂՄ. ՂԲ

1 Մարգարէն կը յորդորէ մարդիկը որ զԱստուած գովեն, 4 անոր մեծ գործքերուն համար, 6 նաեւ անոր դատաստանին համար որ չարերուն կ'ընէ, 10 ու անոր բարութեանը համար որ բարեպաշտներուն կ'ընէ։

Շաբաթ օրուան համար Սաղմոս — երգ։

1 Բարի է գոհանալ Տէրոջմէն, ու սաղմոս ըսել քու անուանդ՝ ով Բարձրեալ,

2 Առտուանց քու ողորմութիւնդ, ու գիշերները քու հաւատարմութիւնդ պատմել,

3 Տասը լար ունեցող նուագարանով ու տաւիղով, քնարի ձայնով։

4 Վասն զի դուն՝ ով Տէր, քու գործքովդ զիս ուրախացուցիր. քու ձեռքերուդ գործքերովը պիտի ցնծամ։

5 Ո՜վ Տէր՝ ի՜նչ մեծ են քու գործքերդ. շատ խորունկ են քու խորհուրդներդ։

6 Անմիտ մարդը ասիկայ չիմանար, ու յիմարը չհասկընար։

7 Ամբարիշտներուն խոտի պէս բուսնիլը, ու բոլոր անօրէնութիւն գործողներուն ծաղկիլը, իրենց յաւիտենական կորստեանը կը տանի։

8 Բայց դուն՝ ով Տէր, յաւիտեան բարձր ես։

9 Վասն զի ահա քու թշնամիներդ՝ ով Տէր, վասն զի ահա քու թշնամիներդ պիտի կորսուին. բոլոր անօրէնութիւն գործողները պիտի ցրուին։

10 Բայց իմ եղջիւրս միեղջերուին պէս պիտի բարձրացընես. ես նոր իւղով օծուեցայ.

11 Ու իմ աչքերս թշնամիներուս [illegible] պիտի տեսնեն. իմ ականջներս ինծի դէմ ելլող չարագործներուն [illegible] պիտի լսեն։

12 Արդարը արմաւենիի պէս պիտի ծաղկի, Լիբանանի եղեւնիի պէս պիտի մեծնայ։

13 Տէրոջը տանը մէջ տնկուածները մեր Աստուծոյն սրահներուն մէջը պիտի ծաղկին.

14 Ծերութեան ատենն ալ պտուղ պիտի տան. պարարտ ու կանանչ պիտի ըլլան.

15 Որ պատմեն թէ՝ Տէրը ուղիղ է. Անիկայ իմ Վէմս է, ու անիրաւութիւն չկայ անոր քովը։

## ՍԱՂՄ. ՂԳ

1-5 Քրիստոսի թագաւորութեանը վեհափառութիւնը, զօրութիւնը ու սրբութիւնը։

1 Տէրը կը թագաւորէ, մեծափառութիւն հագած է. Տէրը զօրութիւն հագած — գօտեւորած է. աշխարհքն ալ հաստատուած է որ չսասանի։

2 Քու աթոռդ հին ժամանակէն հաստատ է. յաւիտենից ես դուն։

3 Ո՜վ Տէր՝ գետերը բարձրացուցին, գետերը բարձրացուցին իրենց ձայնը. գետերը կը բարձրացընեն իրենց շառաչիւնը։

4 Շատ ջուրերուն ձայնէն — ծովուն զօրաւոր ալիքներէն աւելի զօրաւոր է Տէրը բարձրութեան մէջ։

5 Քու վկայութիւններդ շատ հաւատարիմ են. ով Տէր՝ սրբութիւնը քու տանդ կը վայլէ *յաւիտեան։

* Եբր. երկար օրով։

## ՍԱՂՄ. ՂԴ

1 Մարգարէն արդարութիւն խնդրելով՝ բռնաւորութեան ու ամբարշտութեան համար կը գանգատի. 8 Աստուծոյ նախախնամութիւնը կ'իմացընէ. 12 վշտացած մարդուն երջանկութիւնը կը ցուցընէ. 16 կը հաստատէ թէ Աստուած նեղեալը կը պաշտպանէ։

1 Ո՜վ Տէր՝ վրէժխնդրութեանց Աստուածը, ով վրէժխնդրութեանց Աստուածը, յայտնուէ։

2 Ելի՛ր ով երկրին Դատաւորը, ամբարտաւաններուն հատուցում ըրէ։

3 Ո՜վ Տէր՝ մինչեւ ե՞րբ ամբարիշտները, մինչեւ ե՞րբ ամբարիշտները պարծենան.

4 Գոռոզութեամբ բարբառելով խօսին, — բոլոր անօրէնութիւն գործողները պարծենան։

5 Ո՜վ Տէր՝ անոնք քու ժողովուրդդ կը հարստահարեն, ու քու ժառանգութիւնդ կը չարչարեն.

6 Որբեւայրին ու պանդուխտը կը սպաննեն, և որբերը կը մեռցընեն.
7 Ու կ'ըսեն. Տէրը չտեսներ, և Յակոբին Աստուածը չիմանար։
8 Իմացէ՛ք՝ ո՛վ ժողովուրդին անմիտները, ու դուք ո՛վ յիմարներ՝ ե՞րբ միտք պիտի առնէք։
9 Միթէ ականջը տնկողը չը՞լսեր, կամ թէ աչքը ստեղծողը չը՞տեսներ։
10 Միթէ ազգերը խրատողը չը՞յանդիմաներ. միթէ մարդուս գիտութիւն սորվեցընողը չ՞գիտեր։
11 Տէրը մարդոց խորհուրդները գիտէ՝ որ ունայնութիւն են։
12 Երանի՜ այն մարդուն՝ որուն որ դուն կը խրատես՝ ո՛վ Տէր, և քու օրէնքէդ անոր կը սորվեցընես,
13 Որ չարութեան օրերուն մէջը անիկայ հանգչեցընես, մինչև որ ամբարշտին համար հոր փորուի։
14 Վասն զի Տէրը իր ժողովուրդը երեսէ պիտի չձգէ, ու իր ժառանգութիւնը պիտի չմերժէ.
15 Հապա դատաստանը իրաւունքի պիտի դառնայ, ու ամէն սրտով ուղիղները անոր ետևէն պիտի երթան։
16 Ո՞վ ինծի համար չարերուն դէմ պիտի ելլէ, ո՞վ ինծի համար անօրէնութիւն գործողներուն դէմ պիտի կայնի։
17 Եթէ որ Տէրը ինծի օգնական չըլլար, քիչ պիտի մնար որ իմ անձս լռութեան տեղը բնակէր։
18 Երբոր կ'ըսէի թէ՝ իմ ոտքս կը սասանի, ո՛վ Տէր՝ քու ողորմութիւնդ զիս կը հաստատէր։
19 Իմ ներսիդիս հոգերս շատցած ատենը՝ քու մխիթարութիւններդ իմ անձս կ'ուրախացընէին։
20 Միթէ քեզի հետ հաղորդակցութիւն ունի՞ անօրէնութեան աթոռը, որ օրէնքին դէմ չարիք կը պատրաստէ։
21 Արդարին անձին դէմ կը ժողվուին, ու անմեղ արիւնը կը դատապարտեն։
22 Բայց Տէրը իմ ամրութիւնս է, ու իմ Աստուածս՝ իմ ապաւինութեանս վէմը.
23 Եւ անոնց անօրէնութիւնը իրենց վրայ պիտի դարձնէ, ու զանոնք իրենց չարութիւնովը պիտի ջնջէ. մեր Տէր Աստուածը պիտի ջնջէ զանոնք։

## ՍԱՂՄ. ՂԵ

1 Աստուած գովաբանելու յորդորանք մը, 3 իր մեծութեանը, 6 ու իր բարութեանը համար։ 8 Աստուած չփորձելու յորդորանք մը։

1 Եկէ՛ք ցնծութիւն ընենք Տէրոջը առջևը, աղաղակենք մեր փրկութեան վէմին,
2 Գոհութիւնով անոր երեսին առջևը դանք, սաղմոսներով աղաղակենք անոր։
3 Ինչու որ Տէրը մեծ Աստուած է, ու բոլոր աստուածներուն վրայ մեծ թագաւոր է։
4 Անոր ձեռքին մէջն է երկրի խորունկ տեղերը, ու լեռներուն բարձրութիւնները անորն են։
5 Իրն է ծովը, ու ինքը շինեց զանիկայ. և իր ձեռքերը ստեղծեցին ցամաքը։
6 Եկէ՛ք երկրպագութիւն ընենք, ու ծռինք. ծունկ չոքենք մեզ ստեղծող Տէրոջը առջին.
7 Ինչու որ ան է մեր Աստուածը. ու մենք անոր արօտին ժողովուրդը՝ և անոր ձեռքին ոչխարներն ենք. Այսօր թէ որ անոր ձայնին պիտի լսէք,
8 Ձեր սրտերը մի՛ խստացընէք Մերիպային մէջ, անապատին մէջ փորձութեան օրուանը պէս,
9 Ուր որ ձեր հայրերը զիս փորձեցին. քննեցին զիս, ու իմ գործքերս տեսան։
10 Քառասուն տարի զզուեցայ այն ազգէն, ու ըսի. Անոնք սրտով մոլորած ժողովուրդ մըն են, իմ ճամբաներս չճանչցան։
11 Ուստի իմ բարկութեանս մէջ երդում ըրի թէ, անոնք իմ հանգիստս պիտի չմտնեն։

## ՍԱՂՄ. ՂԶ

1 Աստուած գովելու յորդորանք մը, 4 իր մեծութեանը, 8 իր թագաւորութեանը, 11 և իր տիեզերական դատաստանին համար։

1 Նոր երգ երգեցէ՛ք Տէրոջը. ո՛վ բոլոր երկիր՝ երգեցէ՛ք Տէրոջը։
2 Երգեցէ՛ք Տէրոջը, օրհնեցէ՛ք անոր անունը. օրէ օր անոր փրկութիւնը քարոզեցէ՛ք։
3 Անոր փառքը ազգերուն մէջ պատմեցէ՛ք, անոր հրաշքները՝ բոլոր ժողովուրդներուն մէջ.
4 Քանզի Տէրը մեծ է, ու խիստ գովելի. անիկայ բոլոր աստուածներուն վրայ ահաւոր է։
5 Ինչու որ ազգերուն բոլոր աստուածները կուռքեր են. Բայց Եհովան երկինքը ստեղծեց։
6 Փառք ու վայելչութիւն կայ անոր առջին, զօրութիւն ու գեղեցկութիւն անոր սրբարանին մէջ։
7 Տէրոջը տուէ՛ք ո՛վ ժողովուրդներու տոհմերը, Տէրոջը տուէ՛ք փառք ու զօրութիւն։
8 Տէրոջը տուէ՛ք իր անուանը փառքը. ընծայ առէ՛ք, ու անոր սրահներուն մէջ մտէ՛ք.
9 Սուրբ հանդէսով Տէրոջը եր-

կըրպագութիւն ըրէք . վախցէ՛ք անոր երեսէն՝ ո՛վ բոլոր երկիր ։
10 Հեթանոսներուն մէջ ըսէ՛ք թէ՝ ըՏէրը կը թագաւորէ . աշխարհքն ալ հաստատուած է որ չսասանի . ժանիկայ պիտի դատէ ժողովուրդները ուղղութիւնով ։
11 իԵրկինքը թող ուրախանա՛յ , ու երկիրը ցնծա՛յ . լծովը իր լիութեամբը թող գոռա՛յ .
12 Դաշտը՝ ու բոլոր անոր մէջը եղողները թող ուրախանա՛ն . ան ատենը անտառին բոլոր ծառերը թող ցնծան
13 Տէրոջը առջեւը , ինչու որ կու գայ , ինչու որ կու գայ երկիրը դատելու . խպիտի դատէ աշխարհքը արդարութիւնով , ու ժողովուրդները իր ճշմարտութիւնովը ։

ը Սաղ. ՂԳ. 1 ։ ՂԷ. 1 ։ Յայտ. ԺԱ. 15 ։ ԺԹ. 6 ։
ժ Հմմ. 13 ։ Սաղ. ԿԷ. 4 ։ ՂԸ. 9 ։
ի Սաղ. ԿԹ. 34 ։
լ Սաղ. ՂԸ. 7, Ա. ։
խ Սաղ. ԿԷ. 4 ։ Յայտ. ԺԹ. 11 ։

## ՍԱՂՄ . ՂԷ

1 Աստուծոյ թագաւորութեանը վեհափառութիւնը ։ 7 Եկեղեցին՝ կռապաշտներուն վըրայ Աստուծոյ ըրած դատաստաններովը կ'ուրախանայ ։ 10 Բարեպաշտութեան և ուրախութեան յորդորանք մը ։

1 աՏէրը կը թագաւորէ , երկիրը թող ցնծայ . շատ բկղզիներ թող ուրախանա՛ն ։
2 գԱնոր բոլորտիքը ամպ ու մառախուղ կայ , դարդարութիւնը ու իրաւունքը անոր աթոռին հիմերն են ։
3 եԱնոր առջեւէն կրակ կ'երթայ , ու անոր բոլորտիքը եղած թշնամիները կ'այրէ ։
4 զԱնոր փայլակները աշխարհքը կը լուսաւորեն . երկիրը կը տեսնէ ու կը դողայ ։
5 էԼեռները մոմի պէս կը հալին Եհովային երեսէն , բոլոր երկրին Տէրոջը երեսէն ։
6 ըԵրկինքը կը պատմէ անոր արդարութիւնը , ու բոլոր ժողովուրդները կը տեսնեն անոր փառքը ։
7 թԹող ամչնան ան ամէնը որ կուռքերուն կը ծառայեն , որ ունայնութիւններով կը պարծենան . ո՛վ բոլոր աստուածներ՝ ժանոր երկրպագութիւն ըրէք ։
8 Սիօնը լսեց և ուրախացաւ , ու Յուդայի աղջիկները ցնծացին քու իրաւունքներուդ համար՝ ո՛վ Տէր ։
9 Վասն զի դուն՝ ո՛վ Տէր , իբարձրեալ ես բոլոր երկրի վրայ . լշատ բարձրացար բոլոր աստուածներուն վրայ ։
10 Ո՛վ Տէրը սիրողներ՝ խչարութիւնը ատեցէ՛ք . ծանիկայ իր սուրբերուն անձերը կը պահէ , կամբարիշտներուն ձեռքէն կը փրկէ զանոնք ։

ա Սաղ. ՂԶ. 10 ։
բ Ես. Կ. 9 ։
գ Գ Թագ. Ը. 12 ։ Սաղ. ԺԸ. 11 ։
դ Սաղ. ՁԹ. 14 ։
ե Սաղ. ԺԸ. 8 ։ Ծ. 3 ։ Դան. Է. 10 ։ Ամբ. Գ. 5 ։
զ Ել. ԺԹ. 18 ։ Սաղ. ՀԷ. 18 ։ ՃԴ. 32 ։
է Դատ. Ե. 5 ։ Միք. Ա. 4 ։ Նաւ. Ա. 5 ։
ը Սաղ. ԺԹ. 1 ։ Ծ. 6 ։
թ Ել. Ի. 4 ։ Ղև. ԻԶ. 1 ։ Բ Օր. Ե. 8 ։ ԻԷ. 15 ։
ժ Եբր. Ա. 6 ։
ի Սաղ. ԽԸ. 18 ։
լ Ել. ԺԲ. 11 ։ Սաղ. ՂԵ. 3 ։ ՂԶ. 4 ։
խ Սաղ. ԼԴ. 14 ։ ԼԷ. 27 ։ ՃԱ. 3 ։ Ամով. Ե. 15 ։ Հռով. ԺԲ. 9 ։
ծ Սաղ. ԼԱ. 23 ։ ԼԷ. 28 ։ ՃԽԵ. 20 ։ Առակ. Բ. 8 ։
կ Սաղ. ԼԷ. 39, 40 ։ Դան. Գ. 28 ։ Զ. 22, 27 ։

11 հԱրդարին համար լոյս ցանուեցաւ , ու սրտով ուղիղներուն համար ուրախութիւն ։
12 ձՏէրոջմով ուրախացէ՛ք՝ ո՛վ արդարներ , ղու անոր սրբութիւնը յիշելով շնորհակա՛լ եղէք ։

## ՍԱՂՄ . ՂԸ

1 Սաղմոսերգուն կը յորդորէ հրէաները ։ 4 հեթանոսները , 7 ու բոլոր ստեղծուածները՝ որ զԱստուած գովեն .

Սաղմոս ։

1 աՆոր երգ երգեցէք Տէրոջը , ինչու որ բհրաշքներ ըրաւ . գիր աջ ձեռքը ու իր սուրբ բազուկը իրեն * փրկութիւն տուաւ ։
2 դՏէրը ցուցուց իր փրկութիւնը , ազգերուն առջին եյայտնեց իր արդարութիւնը ։
3 զՅիշեց իր ողորմութիւնը ու իր հաւատարմութիւնը Իսրայէլին տանը համար . էերկրին ամէն ծայրերը մեր Աստուծոյն փրկութիւնը տեսան ։
4 ըՑնծացէ՛ք Տէրոջը առջեւ՝ ո՛վ բոլոր երկիր . ուրախութեան ձայնով աղաղակեցէ՛ք ու սաղմոս ըսէք ։
5 Սաղմոս երգեցէք Տէրոջը քնարով ; քնարով ու սաղմոսի ձայնով .
6 թՓողերով ու շեփորի ձայնով աղաղակեցէ՛ք Տէր Թագաւորին առջեւ ։
7 ժԹող գոռայ ծովը ու անոր լիութիւնը . աշխարհքը , ու անոր բնակիչները ։
8 Գետերը իթող ծափ զարնեն , -- լեռները մէկտեղ թող ցնծան
9 Տէրոջը առջեւը , լինչու որ կու գայ երկիրը դատելու . անիկայ պիտի դատէ աշխարհքը արդարութիւնով , ու ժողովուրդները ուղղութիւնով ։

## ՍԱՂՄ . ՂԹ

1 Մարգարէն՝ Սիօնի մէջ եղող Աստուծոյ թագաւորութիւնը կը ստորագրէ . 5 ու նախահայրերուն օրինակովը կը յորդորէ ամէնքն ալ որ Աստուծոյ երկրպագութիւն ընեն իր սուրբ լեռանը վրայ ։

1 աՏէրը կը թագաւորէ , ժողովուրդները թող սարսափին . բիրը քերովբէից վրայ կը նստի , երկիրը թող շարժի ։
2 Տէրը մեծ է Սիօնի մէջ , ու գբարձրացած է բոլոր ժողովուրդներուն վրայ ։
3 Թող գովեն դքու մեծ ու ահաւոր անունդ . անիկայ սուրբ է ։
4 եՆու † թագաւորին զօրութիւնը իրաւունք կը սիրէ" . ուղղութիւն հաստատեցիր , իրաւունք ու արդարութիւն ըրիր Յակոբին մէջը ։

հ Յոբ. ԻԲ. 28 ։ Սաղ. ՃԺԲ. 4 ։ Առակ. Դ. 18 ։
ձ Սաղ. ԼԳ. 1 ։
ղ Սաղ. Լ. 4 ։
ա Սաղ. ԼԳ. 3 ։ ՂԶ. 1 ։ Ես. ԽԲ. 10 ։
բ Ել. ԺԵ. 11 ։ Սաղ. ՀԷ. 14 ։ ՁԶ. 10 ։ ՃԵ. 5 ։ ՃԼԶ. 4 ։ ՃԼԹ. 14 ։
գ Ել. ԺԵ. 6 ։ Ես. ԾԹ. 16 ։ ԿԳ. 5 ։
* Կամ՝ յաղթութիւն
դ Ես. ԾԲ. 10 ։ Ղուկ. Բ. 30, 31 ։
ե Ես. ԿԲ. 2 ։ Հռով. Գ. 25, 26 ։
զ Ղուկ. Ա. 54, 55, 72 ։
է Ես. ԽԹ. 6 ։ ԾԲ. 10 ։ Ղուկ. Բ. 30, 31 ։ Գ. 6 ։ Գործ. ԺԳ. 47 ։ ԻԸ. 28 ։
ը Սաղ. ՂԶ. 1 ։ Ճ. 1 ։
թ Թուոց. Ժ. 10 ։ Ա Մն. ԺԵ. 28 ։ Բ Մն. ԻԹ. 27 ։
ժ Սաղ. ՂԶ. 11, Ա. ։
ի Ես. ԾԵ. 12 ։
լ Սաղ. ՂԶ. 10, 13 ։
ա Սաղ. ՂԳ. 1 ։
բ Ել. ԻԵ. 22 ։ Սաղ. ԺԸ. 10 ։ Ձ. 1 ։
գ Սաղ. ՂԷ. 9 ։
դ Բ Օր. ԻԸ. 58 ։ Յայտ. ԺԵ. 4 ։
ե Յոբ. ԼԶ. 5—7 ։
† Կամ՝ դուն ո՛վ իրաւունք սիրող զօրաւոր Թագաւոր ։

ղ Հմր 9 ·
ե ա Մն · իը · 2 · Սաղ · ճլբ · 7 ·
ը Ղև · ժթ · 2 ·
ր Երեմ · ժե · 1 ·
ժ Ել · ժդ · 15 · ժե · 25 · ա Թագ · է · 9 · ժբ · 18 ·
ի Ել · լգ · 9 ·
լ Թուե · ժդ · 20 · Երեմ · խզ · 28 · Սոփ · գ · 7 ·
խ Տես Ել · լբ · 2 · ա · Թու · ի · 12 · 24 · բ Օր · թ · 20 ·
ծ Հմր 5 · Ել · ժե · 2 · Սաղ · լգ · 3 · ճժը · 28 ·

5 ղԲարձրացուցէ՛ք Տէրը՝ մեր Աստուածը, ու երկրպագութիւն ըրէ՛ք եանոր ոտքերուն պատուանդանին. ըանիկայ սուրբ է ։
6 րՄովսէս ու Ահարոն անոր քահանաներուն մէջը. և Սամուէլ անոր անունը կանչողներուն մէջը, ժՏէրոջը կ՚աղաղակէին, ու անիկայ պատասխան կու տար անոնց.
7 իԱմպի սիւնին մէջէն կը խօսէր անոնց հետ. անոնք կը պահէին անոր վկայութիւնները, ու ան հրամանը՝ որ իրենց տուաւ ։
8 Ո՛վ Տէր՝ մեր Աստուածը, դուն կը լսէիր անոնց. լդուն անոնց ներող Աստուած էիր, թէպէտ խվրէժխնդիր եղար անոնց գործքերուն ։
9 ծԲարձրացուցէ՛ք Տէրը՝ մեր Աստուածը, ու երկրպագութիւն ըրէ՛ք անոր սուրբ լերանը վրայ. ինչու որ Տէրը՝ մեր Աստուածը սուրբ է ։

## ՍԱՂՄ · Ճ

1 Ուրախութեամբ զԱստուած գովելու յորդորանք մը՝ 3 անոր մեծութեանը, 4 ու կարողութեանը համար ։

Գոհութեան սաղմոս ։

ա Սաղ · ղե · 1 · ղը · 4 ·
բ Սաղ · ճժթ · 73 · ճլթ · 13 · Ես · ճխթ · 2 · Եփե · բ · 10 ·
* Կամ՝ մենք անորն ենք ·
գ Սաղ · ղե · 7 · Եզեկ · լդ · 30 · 31 ·
դ Սաղ · կղ · 13 · ճժզ · 17 · 18 · 19 ·
ե Սաղ · ճլզ · 1 · ա ·

1 աԱղաղակեցէ՛ք Տէրոջը՝ ո՛վ բոլոր երկիր.
2 Ծառայեցէ՛ք Տէրոջը ուրախութեամբ. անոր առջին եկէ՛ք ցնծութեամբ ։
3 Ճանչցէ՛ք որ Եհովան է Աստուած. բանիկայ ստեղծեց մեզ, ու *չէ՛ թէ մենք". գմենք անոր ժողովուրդը ու անոր արօտին ոչխարներն ենք ։
4 դՄտէ՛ք անոր դռները գոհութեամբ, ու անոր սրահները օրհնութեամբ. գոհացէ՛ք անկէ, ու օրհնեցէ՛ք անոր անունը ։
5 Վասն զի Տէրը բարի է. եանոր ողորմութիւնը յաւիտեան է, ու անոր հաւատարմութիւնը ազգէ մինչև ազգ ։

## ՍԱՂՄ · ՃԱ

1—8 Դաւիթ բարեպաշտութեան ուխտ ու խոստմունք կ՚ընէ ։

Սաղմոս Դաւթի ։

ա Սաղ · ձթ · 1 ·
բ ա Թագ · ժը · 14 ·
գ գ Թագ · թ · 4 · ժա · 4 ·
դ Յես · իդ · 6 · ա Թագ · ժր · 20 · 21 · Սաղ · խ · 4 · ճիե · 5 ·
ե Սաղ · ղէ · 10 ·

1 աՈղորմութիւն ու իրաւունք պիտի երգեմ. ո՛վ Տէր՝ քեզի սաղմոս պիտի ըսեմ ։
2 բԻմաստութիւնով պիտի քալեմ կատարելութեան ճամբուն մէջ. ե՞րբ ինծի պիտի գաս. գիմ տանս մէջ սրտիս կատարելութիւնովը պիտի վարուիմ ։
3 Աչքերուս առջին չար բան մը պիտի չդնեմ. դմոլորածներուն գործը եկ՚ատեմ. թող անիկայ ինծի չփակչի՛ ։
4 Ծուռ սիրտը թող զատուի ինծմէ. ղչարը պիտի չճանչնամ ։
5 Ան որ ծածուկ կը խօսի իր ընկերին դէմ, պիտի ջնջեմ. եան որ աչքերով բարձր է ու սրտով ամբարտաւան, անոր պիտի չհամբերեմ ։
6 Իմ աչքերս երկրի հաւատարիմներուն վրայ պիտի ըլլան, որ ինծի հետ բնակին. ըկատարելութեան ճամբուն մէջ քալողը ինծի ծառայութիւն պիտի ընէ ։
7 Նենգաւորը պիտի չբնակի իմ տանս մէջ. սուտ խօսողը աչքերուս առջին պիտի չհաստատուի ։
8 Առտուանց րկանուխ պիտի ջնջեմ երկրին բոլոր ամբարիշտները, որ ժՏէրոջը քաղաքէն բոլոր անօրէնութիւն գործողները կորսնցնեմ ։

ղ Մատ · է · 23 · բ Տիմ · բ · 19 ·
ե Սաղ · ժը · 27 · Առակ · զ · 17 ·
ը Սաղ · ճժթ · 1 ·
ր Սաղ · հե · 10 · Երեմ · իա · 12 ·
ժ Սաղ · խը · 2 · 8 ·

## ՍԱՂՄ · ՃԲ

1 Մարգարէն իր աղօթքին մէջ ծանր գանգատ մը կ՚ընէ. 12 բայց Աստուծոյ յաւիտենականութիւնը ու ողորմութիւնը յիշելով՝ կը մխիթարուի. 18 չհամբիր որ Աստուծոյ ողորմութիւնները անյիշատակ մնան. 23 իր տկարութիւնը կը զօրացընէ Աստուծոյ անփոփոխ ըլլալը միտք բերելով ։

Վշտալիին աղօթքը՝ աերբոր բէրբը կը մարի ու իր գանգատը Տէրոջը առջին կը թափէ ։

1 Ո՛վ Տէր՝ լսէ՛ իմ աղօթքս. բու իմ աղաղակս թող քեզի հասնի ։
2 գՔու երեսդ մի՛ ծածկեր ինծմէ իմ նեղութեանս օրը. դխոնարհեցո՛ւր ինծի քու ականջդ. շուտով պատասխան տուր ինծի ան օրը՝ որ քեզի կանչեմ ։
3 եԻնչու որ իմ օրերս մուխի պէս փճացան, և զիմ ոսկորներս խարուկի պէս այրեցան ։
4 Սիրտս զարնուեցաւ ու էխոտի պէս չորցաւ, անանկ որ իմ հացս ուտելու մոռցայ ։
5 Հառաչանքիս ձայնէն ըոսկորներս մարմինիս փական ։
6 Անապատին մէջի րհաւալուսին ժնմանեցայ, աւերակներուն բուին պէս եղայ ։
7 իԱնքուն մնացի, ու նման եղայ տանիքին վրայ լմինակ եղող ճնճղուկին ։
8 Ամէն օր իմ թշնամիներս զիս կը նախատեն, խիմ վրաս բարկացողները ծինծի դէմ երդում կ՚ընեն ։
9 Ինչու որ մոխիրը հացի պէս կերայ, ու կխմելիքս արցունքով խառնեցի
10 Քու բարկութեանդ ու սրտմտութեանդ համար, ինչու որ զիս վերցուցիր ու նետեցիր ։
11 հԻմ օրերս երկընցած ստուերի պէս եղան. ու ձես խոտի պէս չորցայ ։

ա Սաղ · կա · 2 · ճխբ · 2 ·
բ Ել · ր · 23 · ա Թագ · թ · 16 · Սաղ · ժը · 6 ·
գ Սաղ · իէ · 9 · կթ · 17 ·
դ Սաղ · հա · 2 · ձը · 2 ·
ե Սաղ · ճժթ · 83 · Յակ · դ · 15 ·
զ Յոբ · լ · 30 · Սաղ · լա · 10 · Ողբ · ա · 13 ·
է Սաղ · լէ · 2 · Հմր 11 ·
ը Յոբ · ժթ · 20 · Ողբ · դ · 8 ·
թ Ես · լդ · 11 · Սոփ · բ · 14 ·
ժ Յոբ · լ · 29 ·
ի Սաղ · հէ · 4 ·
լ Սաղ · լը · 11 ·
խ Գոր · իգ · 11 ·
ծ Գոր · իգ · 12 ·
կ Սաղ · խբ · 3 · ձ · 5 ·
հ Յոբ · ժդ · 2 · Սաղ · ճթ · 23 · ճխդ · 4 · Ժող · զ · 12 ·
ձ Հմր 4 · Ես · խ · 6 · 7 · 8 · Յակ · ա · 10 ·

12 Բայց դուն ով Տէր յաւիտեան կը կենաս, և ճքու յիշատակդ ազգէ մինչև ազգ։
13 Դուն պիտի ելլես ու մՍիոնին ողորմիս. ինչու որ ժամանակ է անոր ողորմելու, ինչու որ յորոշուած ժամանակը հասաւ։
14 Վասն զի քու ծառաներդ նանոր քարերուն կը հաւնին, ու անոր հողին կը գթան։
15 Եւ հեթանոսները շպիտի վախնան Տէրոջը անունէն, ու երկրի բոլոր թագաւորները քու փառքէդ։
16 Ինչու որ Տէրը պիտի շինէ Սիոնը. ոիր փառքովը պիտի երևնայ։
17 չՏնանկներուն աղօթքը մտիկ պիտի ընէ, ու անոնց աղօթքը պիտի չանարգէ։
18 Աս պիտի պգրուի գալու ազգին համար. ու ջստեղծուելու ժողովուրդը Տէրոջը գովութիւն պիտի տայ։
19 Վասն զի ռիր սրբութեանը բարձրութենէն հայեցաւ. Տէրը երկինքէն երկրին վրայ նայեցաւ.
20 Որ սկապուածին հառաչանքը լսէ, ու մահու որդիները արձակէ,
21 Որ Սիոնի մէջ ւՏէրոջը անունը պատմեն, ու անոր գովութիւնը Երուսաղէմի մէջ,
22 Երբոր ժողովուրդները մէկտեղ ժողվուին, ու թագաւորութիւնները՝ Տէրոջը ծառայելու համար։
23 Անիկայ զօրութիւնս տկարացուց ճամբուն մէջ, ու փիմ օրերս կարճըցուց։
24 քԵս ըսի. Ո՛վ իմ Աստուածս՝ իմ օրերուս կէսին մէջը զիս մի՛ վերցըներ. ցքու տարիներդ ազգէ մինչև ազգ են։
25 ւՍկիզբէն երկրին հիմերը դրիր, ու երկինքը քու ձեռքերուդ գործքն է։
26 փԱնոնք պիտի կորսուին՝ քբայց դուն պիտի կենաս. ու անոնց ամէնը լաթի պէս պիտի մաշին. հանդերձի պէս պիտի փոխես անոնք, ու պիտի փոխուին։
27 Բայց օդուն նոյն ինքն ես, և քու տարիներդ պիտի չվերջանան։
28 ֆՔու ծառաներուդ որդիքը պիտի բնակին, ու անոնց սերունդը հաստատ պիտի մնայ քու առջիդ։

ՍԱՂՄ. ՃԳ

1 Աստուած օրհնելու յորդորանք մը՝ անոր ողորմութեանը համար. 15 ու անոր գթութեանը տևողական ըլլալուն համար։

Սաղմոս Դաւթի։

1 Ո՛վ իմ անձս՝ աօրհնէ Տէրը, ու ան ամէնը որ իմ ներսի դիս է՝ անոր սուրբ անունը։
2 Ո՛վ իմ անձս՝ օրհնէ Տէրը, և անոր բոլոր բարերարութիւնները մի՛ մոռնար.
3 բՈր կը քաւէ բոլոր անօրէնութիւններդ, ու գկը բժշկէ քու բոլոր հիւանդութիւններդ.
4 Որ դկը փրկէ քու կեանքդ ապականութենէն, և եկը պսակէ քեզ ողորմութիւնով ու գթութիւնով.
5 Որ կը լեցընէ քու ծերութիւնդ բարութիւնով. ու զքու մանկութիւնդ արծիւին պէս կը նորոգուի։
6 էՏէրը արդարութիւններ ու իրաւունքներ կ'ընէ բոլոր զրկուածներուն։
7 ըԱնիկայ իր ճամբաները Մովսէսին ճանչցուց, ու իր գործքերը՝ Իսրայէլի որդիներուն։
8 թԲարեգութ ու ողորմած է Տէրը, երկայնամիտ ու առատ՝ ողորմութիւնով։
9 ժԱնիկայ մինչև վերջը չհակառակիր, և յաւիտեան ոխ չպահեր։
10 իԱնիկայ մեր մեղքերուն համեմատ չըրաւ մեզի, ու մեր անօրէնութիւններուն համեմատ հատուցում չըրաւ մեզի։
11 լՀապա՛ որչափ որ երկինքը երկրէս բարձր է, այնչափ իր ողորմութիւնը իրմէն վախցողներուն վրայ զօրաւոր է։
12 Որչափ որ արևելքը արևմուտքէն հեռու է, այնչափ խհեռացուց մեզմէ մեր յանցանքները։
13 ծԻնչպէս որ հայր մը կը գթայ իր որդւոցը վրայ, այնպէս ալ Տէրը կը գթայ իրմէն վախցողներուն վրայ։
14 Վասն զի ան գիտէ մեր կազմուածքը, կկը յիշէ որ մենք հհող ենք։
15 ձՄարդուն օրերը խոտի պէս են. ղինչպէս դաշտի ծաղիկը, անանկ կը ծաղկի։
16 Վասն զի հովը անոր վրայէն կ'անցնի ու ան կ'ոչնչանայ, և ճալ անոր տեղը չճանչնար զանիկայ։
17 Բայց Տէրոջը ողորմութիւնը յաւիտենէ յաւիտենից իրմէն վախցողներուն վրայ է, ու անոր արդարութիւնը մորդւոց որդիներուն վրայ.
18 յԱնոնց վրայ է՝ որ կը պահեն անոր ուխտը, և կը յիշեն անոր պատուիրանքները, ու կը կատարեն։
19 Տէրը իր նաթոռը երկինքի մէջ հաստատեց. ու շանոր թագաւորութիւնը ամենուն վրայ կը տիրէ։
20 ոՕրհնեցէք Տէրը՝ ով անոր հրեշտակները, որ ուժով զօրաւոր էք, որ անոր խօսքին ձայնը լսելով՝ չիր հրամանը կը կատարէք.
21 Օրհնեցէք Տէրը՝ ով պանոր բոլոր

ա Հռմ. 26։ Սաղ. Թ. 7։ Ողբ. Ե. 19։
բ Սաղ. ՃԼԵ. 13։
գ Ես. Կ. 10։ Զաք. Ա. 12։
դ Ես. Խ. 2։
ե Տես Սաղ. ՀԹ. 1։
զ Գթագ. Ը. 43։ Սաղ. ՃԼԶ. 4։ Ես. Կ. 3։
է Ես. Կ. 1, 2։
ը Նեեմ. Ա. 6, 11։ Բ. 8։
թ Հռովմ. ԺԵ. 4։ Ա Կոր. Ժ. 11։
ժ Սաղ. ԻԲ. 31։ Ես. ԽԳ. 21։
ի Բ Օր. ԻԶ. 15։ Սաղ. ԺԴ. 2։ ԼԴ. 13, 14։
լ Սաղ. ՀԹ. 11։
խ Սաղ. ԻԲ. 22։
ծ Յոբ. ԽԱ. 21։
կ Ես. ԼԸ. 10։
հ Սաղ. Դ. 2։ Ամբ. Ա. 12։
ձ Ծն. Ա. 1։ Բ. 1։ Եբր. Ա. 10։
ղ Ես. ԼԴ. 4։ ԾԱ. 6։ ԿԵ. 17։ ԿԴ. 22։ Հռովմ. Ը. 20։ Բ Պետ. Գ. 7, 10, 11, 12։
ճ Հմր 12։
մ Մաղ. Գ. 6։ Եբր. ԺԳ. 8։ Յակ. Ա. 17։
յ Սաղ. ԿԹ. 36։

ա Հմր 22։ Սաղ. ՃԴ. 1։ ՃԽԶ. 1։
բ Սաղ. ՃԼ. 8։ Ես. ԼԳ. 24։ Մատ. Թ. 2, 6։ Մար. Բ. 5, 10, 11։ Ղուկ. Է. 47։
գ Ել. ԺԵ. 26։ Սաղ. ՃԽԷ. 3։ Երեմ. ԺԷ. 14։
դ Սաղ. ԼԴ. 22։ ԾԶ. 13։
ե Սաղ. Ե. 12։
զ Ես. Խ. 31։
է Սաղ. ՃԽԶ. 7։
ը Սաղ. ՃԽԷ. 19։
թ Ել. ԼԴ. 6, 7։ Թուոց ԺԴ. 18։ Բ Օր. Ե. 10։ Նեեմ. Թ. 17։ Սաղ. ՁԶ. 15։ Երեմ. ԼԲ. 18։
ժ Սաղ. Լ. 5։ Ես. ԾԷ. 16։ Երեմ. Գ. 5։ Միք. Է. 18։
ի Եզր. Թ. 13։
լ Սաղ. ԾԷ. 10։ Եփես. Գ. 18։
խ Ես. ԽԳ. 25։ Միք. Է. 18։
ծ Մաղ. Գ. 17։
կ Սաղ. ՀԸ. 39։
հ Ծն. Գ. 19։ Ժող. ԺԲ. 7։
ձ Սաղ. Ղ. 5, 6։ Ա Պետ. Ա. 24։
ղ Յոբ. ԺԴ. 1, 2։ Յակ. Ա. 10, 11։
ճ Յոբ. Է. 10։ Ի. 9։
մ Ել. Ի. 6։
յ Բ Օր. Է. 9։
ն Սաղ. ԺԱ. 4։
շ Սաղ. ԽԷ. 2։ Դան. Դ. 25, 34, 35։
ո Սաղ. ՃԽԸ. 2։
չ Մատ. Զ. 10։ Եբր. Ա. 14։
պ Ծն. ԼԲ. 2։ Յես. Ե. 14։ Սաղ. ԿԸ. 17։

զօրքերը, [ջ]անոր կամքը կատարող պաշտօնեաները։

22 [ռ]Օրհնեցէք Տէրը՝ ով անոր բոլոր գործքերը անոր տէրութեանը ամէն տեղերուն մէջ. [ս]օրհնէ՛ Տէրը՝ ով իմ անձս։

## ՍԱՂՄ. ՃԴ

1 Աստուծոյ մեծ զօրութեանը, 7 և սքանչելի նախախնամութեանը վրայով խորհրդածութիւն մը։ 31 Աստուածային փառաց յաւիտենականութիւնը։ 33 Մարգարէն ուխտ կ՚ընէ որ միշտ զԱստուած գովէ։

1 [ա]Օրհնէ՛ Տէրը՝ ո՛վ իմ անձս. ո՛վ Տէր՝ իմ Աստուածս, դուն խիստ մեծ ես. [բ]փառք ու վայելչութիւն հագած ես.

2 [գ]Լոյսը հանդերձի պէս կը հագնիս, [դ]երկինքը վարագոյրի պէս կը տարածես։

3 [ե]Անիկայ իր վերնատուները ջուրերուն վրայ կը շինէ. [զ]ամպերը իրեն կառք կ՚ընէ. [է]հովին թեւերուն վրայ կը պտըտի։

4 [ը]Իր հրեշտակները հոգիներ կ՚ընէ, [թ]իր պաշտօնեաները կրակի բոց։

5 [ժ]Անիկայ հաստատեց երկիրը իր հիմերուն վրայ, որ յաւիտեանս յաւիտենից չխախտի։

6 [ի]Զանիկայ անդունդով ծածկեցիր՝ իբր թէ հանդերձով. ջուրերը լեռներուն վրայ կայնեցան.

7 [լ]Քու սաստելէդ փախան. քու որոտմունքիդ ձայնէն արտորալով փախան.

8 [խ]Լեռներուն վրայ ելան, ու հովիտներուն մէջ իջան, [ծ]այն տեղը՝ որ դուն հաստատեցիր անոնց համար։

9 [ծ]Սահման դրիր, որ չանցնին, [կ]ու նորէն երկիրը չծածկեն։

10 Ձորերուն մէջը աղբիւրներ կը խրկէ. ջուրերը լեռներուն մէջէն կ՚երթան։

11 Անոնք բոլոր դաշտի գազաններուն կը խմցընեն. ու վայրի էշերը իրենց ծարաւութիւնը կ՚անցընեն։

12 Անոնց քովը երկինքի թռչունները կը բնակին, ոստերուն մէջէն ձայն կու տան։

13 [ձ]Անիկայ իր վերնատուններէն լեռները կը ջրէ. քու [ղ]գործքերուդ պտուղէն [ճ]երկիրը կը կշտանայ։

14 [մ]Անիկայ անասուններուն համար խոտ կը բուսցընէ, ու մարդուն ծառայութեան համար բոյս, որ [յ]կերակուր հանէ երկրէն,

15 Ու [ն]գինի՝ որ կ՚ուրախացընէ մարդուն սիրտը, և *իւղ՝ որ անոր երեսը կը փայլեցընէ, ու հաց՝ որ կը հաստատէ մարդուն սիրտը։

16 Տէրոջը ծառերը կուշտ են, Լիբանանի եղեւինները՝ [շ]որ ինքը տնկեց։

17 Հոն թռչունները բոյներնին կը շինեն, ու արագիլին բնակարանը մայրերուն վրայ է։

18 Բարձր լեռները այծեամներուն ապաւէն են, ու վէմերը [ո]ճագարներուն։

19 [չ]Ժամանակներու համար լուսինը ստեղծեց. արեգակը [պ]իր մարը մտնելը կը ճանչնայ։

20 [ջ]Խաւարը կը դնես, ու գիշեր կ՚ըլլայ, որուն մէջ անտառին բոլոր գազանները կը պտըտին։

21 [ռ]Առիւծներուն կորիւնները կը մռնչեն յափշտակութեան համար, ու Աստուծմէ իրենց կերակուրը կը խնդրեն.

22 Արեգակը ծագելուն պէս կը ժողվուին, և իրենց որջերուն մէջը կը պառկին։

23 Մարդը մինչև իրիկուն [ս]իր գործքին ու իր ծառայութեանը կ՚երթայ։

24 [վ]Ո՛վ Տէր՝ որչափ շատ են քու գործքերդ. անոնց բոլորը իմաստութիւնով ըրիր. երկիրը լցուած է քու [տ]ստեղծածներովդ։

25 Աս ծովը մեծ ու խիստ լայն է, հոն անթիւ սողացողներ, պզտիկ ու մեծ կենդանիներ կան։

26 Հոն նաւերը կը քալեն, ու [ր]Լեւիաթանը՝ որ անոր մէջը խաղալու համար ստեղծեցիր։

27 [ց]Ասոնց ամէնը քեզի կը սպասեն, որ իրենց կերակուրը ժամանակին տաս։

28 Դուն անոնց կու տաս, ու անոնք կը ժողվեն. ձեռքդ կը բանաս, ու բարութիւնով կը կշտանան։

29 Երբոր քու երեսդ կը ծածկես, կը խռովին. երբոր [ւ]անոնց հոգին կ՚առնես, կը մեռնին, և իրենց հողը կը դառնան։

30 [փ]Հոգիդ կը խրկես ու անոնք կը ստեղծուին, ու երկրիս երեսը կը նորոգես։

31 Տէրոջը փառքը յաւիտեան ըլլայ. Տէրը [ք]իր գործքերուն վրայ ուրախանայ.

32 Երկրիս վրայ կը նայի, ու ան [և]կը դողայ. [օ]լեռներուն կը դպչի, և անոնք կը մխան։

33 [ֆ]Տէրոջը պիտի երգեմ իմ կենացս մէջ. սաղմոս պիտի ըսեմ իմ Աստուծոյս՝ քանի որ ողջ եմ։

34 Անոր վրայով իմ մտածութիւնըս քաղցր պիտի ըլլայ. ես Տէրոջմով պիտի ուրախանամ։

35 [—]Մեղաւորները աշխարհքէն պիտի պակսին, ու ամբարիշտները ոչնչանան։ [Ի]Օրհնէ՛ Տէրը՝ ո՛վ իմ անձս։ [‡]Ալէլուիա։

ջ Դան. է. 9, 10։ Եբր. ա. 14։
ռ Սաղ. ճխե. 10։
ս Հմր 1։

ա Սաղ. ճգ. 1։ Հմր 35։
բ Սաղ. ղգ. 1։
գ Դան. է. 9։
դ Ես. խ. 22։ խե. 12։
ե Ամով. թ. 6։
զ Ես. ժթ. 1։
է Սաղ. ժը. 10։
ը Եբր. ա. 7։
թ 2 Թագ. բ. 11։ զ. 17։
ժ Յոբ. իզ. 7։ լը. 4, 6։ Սաղ. իդ. 2։ ճլզ. 6։ Ժող. ա. 4։
ի Ծն. է. 19։
լ Ծն. ը. 1։
խ Ծն. ը. 5։
ծ Յոբ. լը. 10, 11։
կ Յոբ. իզ. 10։ Սաղ. լգ. 7։ Երեմ. ե. 22։
հ Ծն. թ. 11, 15։
ձ Սաղ. ճխէ. 8։
ղ Երեմ. ժ. 13։ ժգ. 22։
ճ Սաղ. կե. 9, 10։
մ Ծն. ա. 29, 30։ գ. 18։ թ. 3։ Սաղ. ճխէ. 8։
յ Սաղ. ճլզ. 25։ ճխե. 9։ Յոբ. իր. 5։
ն Դատ. թ. 13։ Սաղ. իգ. 5։ Առակ. լա. 6, 7։
* Եբր. իւղէն, կամ՝ իւղէն աւելի

շ Թուոց. իդ. 6։
ո Առակ. լ. 26։
չ Ծն. ա. 14։
պ Յոբ. լը. 12։
ջ Ես. խե. 7։
ռ Յոբ. լը. 39։ Յովել. ա. 20։
ս Ծն. գ. 19։
վ Առակ. գ. 19։
տ Կամ՝ ստացուածներովդ։
ր Յոբ. խա. 1։
ց Սաղ. ճլզ. 25։ ճխե. 15։ ճխէ. 9։
ւ Յոբ. լդ. 14, 15։ Սաղ. ճխզ. 4։ Ժող. ժբ. 7։
փ Ես. լբ. 15։ Եզեկ. լէ. 9։
ք Ծն. ա. 31։
և Ամբ. դ. 10։
օ Սաղ. ճխդ. 5։
ֆ Սաղ. կգ. 4։ ճխզ. 2։
— Սաղ. լէ. 38։ Առակ. բ. 22։
Ի Հմր 1։
‡ Եբ. Տէրը օրհնեցէք։

## ՍԱՂՄ · ՃԵ

1 Աստուած գովաբանելու ու անոր գործքերը քննելու յորդորանք մը ։ 7 Աստուծոյ նախախնամական գութը որ ցուցուցեր էր Աբրահամին, 16 Յովսէփին, 23 Եգիպտոսի մէջ Յակոբին, 26 Իսրայէլացիները ազատող Մովսէսին, 37 ու Իսրայէլացիներուն՝ որոնք Եգիպտոսէն դուրս հանեց, անապատին մէջ կերակրեց, ու Քանանու մէջ բնակեցուց ։

1 Գոհացէ՛ք Տէրոջմէն . անոր անունը կանչեցէ՛ք . անոր գործքերը ժողովուրդներուն մէջը պատմեցէ՛ք ։
2 Երգեցէ՛ք անոր . սաղմոս ըսէք անոր . պատմեցէ՛ք անոր բոլոր հրաշքները ։
3 Անոր սուրբ անունովը պարծենցէ՛ք . Տէրը խնդրողներուն սիրտը թող ուրախ ըլլայ ։
4 Տէրը ու անոր զօրութիւնը խնդրեցէ՛ք . ամէն ժամանակ անոր երեսը փնտռեցէ՛ք ։
5 Յիշեցէ՛ք անոր ըրած հրաշքները, անոր նշանները ու բերնին դատաստանները,
6 Ո՛վ անոր ծառային Աբրահամին սերունդը, ո՛վ Յակոբին որդիքը՝ անոր ընտրեալները .
7 Եհովան ինքն է մեր Աստուածը . անոր դատաստանները բոլոր երկրիս մէջն են ։
8 Անիկայ իր ուխտը յաւիտեան կը յիշէ, իր պատուիրած խօսքը մինչեւ հազար ազգ .
9 Այն ուխտը՝ որ Աբրահամին հետ ըրաւ, ու իր երդումը՝ որ Իսահակին ըրաւ .
10 Յակոբին ալ հաստատեց զանիկայ՝ օրէնք մը ըլլալու, Իսրայէլին՝ յաւիտենական ուխտ մը,
11 Ըսելով . Քեզի պիտի տամ Քանանու երկիրը՝ ձեր ժառանգութեան վիճակը .
12 Երբոր անոնք սակաւաթիւ էին, քիչուոր ու պանդուխտ անոր մէջը,
13 Ու ազգէ ազգ, թագաւորութենէ ուրիշ ժողովուրդի .
14 Անիկայ մէկու մը թող չտուաւ որ զանոնք նեղէ . թագաւորներ ալ յանդիմանեց անոնց համար,
15 Ըսելով . Իմ օծեալներուս մի՛ դպչիք, ու իմ մարգարէներուս չարութիւն մի՛ ընէք ։
16 Ու սով կանչեց երկրին վրայ . հացին բոլոր զօրութիւնը կոտրեց ։
17 Անոնց առջեւէն մարդ խրկեց, Յովսէփը՝ որ ծառայութեան ծախուեցաւ ։
18 Անոր ոտքերը կապանքով նեղեցին . անոր անձը երկաթի մէջ դրուեցաւ .
19 Մինչեւ ան ժամանակը որ անոր խօսքը եկաւ, Տէրոջը խօսքը փորձեց զանիկայ ։
20 Թագաւորը խրկեց ու արձկեց զանիկայ . ժողովուրդներուն իշխանը ազատեց զանիկայ ։
21 Իր տանը վրայ տէր կեցուց զանիկայ, եւ իր բոլոր ունեցածին վրայ իշխող .
22 Որ անոր իշխանները իր ուզածին պէս կապէ, ու անոր ծերերը իմաստուն ընէ ։
23 Եւ Իսրայէլը Եգիպտոս եկաւ, ու Յակոբը պանդուխտ եղաւ Քամի երկրին մէջ ։
24 Եւ Տէրը իր ժողովուրդը խիստ շատցուց, ու զանոնք իրենց թշնամիներէն աւելի զօրաւոր ըրաւ ։
25 Անոնց սիրտը դարձուց որ իր ժողովուրդը ատեն, ու իր ծառաներուն նենգութիւն ընեն ։
26 Իր ծառան Մովսէսը խրկեց, ու իր ընտրած Ահարոնը,
27 Որոնք անոնց մէջը իր նշանները ըրին, ու հրաշքներ՝ Քամի երկրին մէջ .
28 Խաւար խրկեց ու խաւարեցուց . եւ անոր խօսքին դէմ չկեցան ։
29 Անոնց ջուրերը արիւնի դարձուց, ու անոնց ձուկերը սպաննեց ։
30 Անոնց երկիրը առատօրէն գորտեր դուրս բերաւ, մինչեւ անոնց թագաւորներուն ներքին սենեակներուն մէջը ։
31 Ըսաւ, ու շանաճանճը ու մունները անոնց բոլոր սահմաններուն մէջը եկան ։
32 Անձրեւի տեղ կարկուտ տուաւ անոնց, ու կրակի բոցեր՝ անոնց երկրին մէջը ։
33 Եւ անոնց որթերը ու թզենիները զարկաւ, եւ անոնց սահմաններուն ծառերը կոտրտեց ։
34 Ըսաւ, ու եկաւ մարախը, եւ ջորեակը՝ առանց համրանքի .
35 Ու անոնց երկրին մէջի բոլոր խոտը կերան, եւ անոնց արտերուն պտուղը կերան ։
36 Ու անոնց երկրին մէջի բոլոր անդրանիկները, անոնց բոլոր զօրութեանը սկիզբը զարկաւ ։
37 Եւ զանոնք արծաթով ու ոսկիով հանեց . ու անոնց ցեղերուն մէջ տկար մարդ չկար ։
38 Եգիպտոս ուրախացաւ անոնց դուրս ելլելուն . ինչու որ անոնց ահը իրենց վրայ ինկած էր ։
39 Տէրը հովանի ըլլալու համար ամպը, ու գիշերը լոյս տալու համար կրակը տարածեց ։
40 Խնդրեցին, ու լորամարգիներ բերաւ, ու երկինքի հացով կշտացուց զանոնք ։
41 Վէմը պատռեց, ու ջուրերը

Ա Մն. ժզ. 8-22. Ես. ժբ. 4.
Բ Սաղ. Ճխե. 4, 5, 11.
Գ Սաղ. Ճժթ. 27.
Դ Սաղ. իե. 8.
Ե Սաղ. հէ. 11.
Զ Ես. իզ. 9.
Է Ղու. ա. 72.
Ը Ծն. ժէ. 2. իբ. 16. իզ. 3. իը. 13. լե. 11. Ղուկ. ա. 73. Եբր. զ. 17.
Թ Ծն. ժգ. 15. ժե. 18.
Ժ Ծն. լդ. 30. Բ Օր. է. 7. իզ. 5.
Ժա Եբր. ժա. 9.
Ժբ Ծն. լե. 5.
Ժգ Ծն. ժբ. 17. ի. 3, 7.
Ժդ Ծն. խա. 54.
Ժե Ղեւ. իզ. 26. Ես. գ. 1. Եզեկ. դ. 16.
Ժզ Ծն. խե. 5. ծ. 20.
Ժէ Ծն. լէ. 28, 36.
Ժը Ծն. լթ. 20. խ. 15.
Ժթ Ծն. խա. 25.
Ի Ծն. խա. 14.
Իա Ծն. խա. 40.
Իբ Ծն. խզ. 6.
Իգ Սաղ. հը. 51. Ճզ. 22.
Իդ Ել. ա. 7.
Իե Ել. ա. 8.
Իզ Կամ՝ դարձաւ
Իէ Ել. գ. 10. դ. 12, 14.
Իը Թուոց. ժզ. 5. ժէ. 5.
Իթ Ել. է. ը. թ. ժ. ժա. ժբ. Սաղ. հը. 43.
Լ Սաղ. Ճզ. 22.
Լա Ել. ժ. 22.
Լբ Սաղ. ղթ. 7.
Լգ Ել. է. 20. Սաղ. հը. 44.
Լդ Ել. ը. 6. Սաղ. հը. 45.
Լե Ել. ը. 17, 24. Սաղ. հը. 45.
Լզ Ել. թ. 23, 25. Սաղ. հը. 48.
Լէ Սաղ. հը. 47.
Լը Ել. ժ. 4, 13, 14. Սաղ. հը. 46.
Լթ Ել. ժբ. 29. Սաղ. հը. 51.
Խ Ծն. խթ. 3.
Խա Ել. ժբ. 35.
Խբ Ել. ժբ. 33.
Խգ Ել. ժգ. 21. Նէեմ. թ. 12.
Խդ Ել. ժզ. 12. Սաղ. հը. 18, 27.
Խե Սաղ. հը. 24, 25.
Խզ Ել. ժէ. 6. Թուոց. ի. 11. Սաղ. հը. 15, 16.
Խէ Ա Կոր. ժ. 4.

վազեցին . գետի պէս քալեցին չոր տեղերուն մէջ ։
42 ըԻնչու որ Իր սուրբ խօսքը յիշեց , որն որ իր Աբրահամ ծառային հետ ըրեր էր ։
43 Ու իր ժողովուրդը ցնծութիւնով հանեց , և իր ընտրածները ուրախութիւնով ։
44 թՈւ հեթանոսաց երկիրները անոնց տուաւ . և ժողովրդոց վաստակները ժառանգեցին անոնք .
45 ժՈրպէս զի անոր պատուիրանքները պահեն , եւ անոր օրէնքները կատարեն ։ Ալէլուիա ։

ը Ծն. ժե. 14 ։
թ Օր. զ. 10, 11 ։ Յես. ժգ. 7, Ա ։ Սաղ. հը. 55 ։
ժ Օր. դ. 1, 40 ։ զ. 21—25 ։

## ՍԱՂՄ . ՃԶ

*1 Սաղմոսերգուն կը յորդորէ մարդիկը զԱստուած գովաբանելու ։ 4 Մեղքի թողութեան համար աղօթք կ'ընէ , յիշելով թէ ի՛նչպէս Աստուած իրենց հայրերուն մեղքերը ներեց ։ 7 Ժողովուրդին ապստամբութիւնը՝ ու Աստուծոյ ողորմութիւնը կը պատմէ ։ 47 Աղօթքով ու գովութիւնով կը վերջացընէ սաղմոսը ։*

1 Ալէլուիա ։ աԳոհացէ՛ք Տէրոջմէն , ինչու որ բարի է . ինչու որ անոր ողորմութիւնը յաւիտեան է ։
2 բՈ՞վ պիտի պատմէ Տէրոջը մեծ գործքերը . ո՞վ պիտի իմացընէ անոր ամէն գովութիւնը ։
3 Երանի անոնց՝ որ իրաւունքը կը պահեն , ու գամէն ժամանակ դարդարութիւն կ'ընեն ։
4 եՅիշէ զիս՝ ով Տէր , քու ժողովուրդիդ վրայ ունեցած հաճութեանդ համեմատ , ինծի այցելութիւն ըրէ քու փրկութիւնովդ .
5 Որ քու ընտրեալներուդ բարութիւնը տեսնեմ , քու ազգիդ ուրախութիւնովը ուրախանամ՝ քու ժառանգութիւնովդ պարծենամ ։
6 զՄենք մեր հայրերուն հետ մեղանչեցինք . անօրէնութիւն ըրինք , ամբարշտութիւն գործեցինք ։
7 Մեր հայրերը Եգիպտոսի մէջ չիմացան քու հրաշքներդ , չյիշեցին քու ողորմութեանդ շատութիւնը . էհապա ապստամբեցան ծովուն քովը , Կարմիր ծովուն քովը ։
8 ըԲայց զանոնք Իր անուանը համար փրկեց , թոր իր մեծ զօրութիւնը ճանչցընէ ։
9 ժԵւ Կարմիր ծովուն սաստեց , ու ցամքեցաւ . ու իանդունդներուն մէջէն քալել տուաւ անոնց իբր թէ անապատին մէջէն ։
10 Եւ լզանոնք փրկեց ատողին ձեռքէն , ու ազատեց զանոնք թշնամիին ձեռքէն ։
11 խԵւ ջուրերը անոնց թշնամիները ծածկեցին . անոնցմէ մէկը չմնաց ։
12 ծԱն ատենը հաւատացին անոր խօսքին , և անոր օրհնութիւն երգեցին ։

ա ամՆ. ժզ. 34 ։ Սաղ. ճէ. 1 ։ ճժը. 1 ։ ճլզ. 1 ։
բ Սաղ. խ. 5 ։
գ Գոր. իդ. 16 ։ Գաղ. զ. 9 ։
դ Սաղ. ժե. 2 ։
ե Սաղ. ճժթ. 132 ։
զ Ղև. իզ. 40 ։ գ Թագ. ը. 47 ։ Դան. թ. 5 ։
է Ել. ժդ. 11, 12 ։
ը Եզեկ. ի. 14 ։
թ Ել. թ. 16 ։
ժ Ել. ժդ. 21 ։ Սաղ. ժը. 15 ։ Նաւ. ա. 4 ։
ի Ես. կգ. 11, 12, 13, 14 ։
լ Ել. ժդ. 30 ։
խ Ել. ժդ. 27, 28 ։ ժե. 5 ։
ծ Ել. ժդ. 31 ։ ժե. 1 ։

13 կՇուտով մոռցան անոր գործքերը , ու անոր խրատին չսպասեցին ։
14 հԵւ անապատին մէջ խիստ ցանկացան . ու զԱստուած փորձեցին անջուր տեղին մէջ ։
15 ձԵւ անոնց տուաւ իրենց ուզածը , թէպէտև ղվատուժութիւն խրկեց անոնց անձերուն վրայ ։
16 ճԵւ Մովսէսին նախանձեցան բանակին մէջը , ու Տէրոջը սուրբին Ահարոնին ։
17 մԵրկիրը բացուեցաւ ու կլլեց Դաթանը , ու Աբիրոնին ժողովքը ծածկեց ։
18 յԵւ կրակ բորբոքեցաւ անոնց ժողովքին մէջը . բոցը այրեց ամբարիշտները ։
19 նՈրթ շինեցին Քորեբի մէջ , ու երկրպագութիւն ըրին ձուլածոյ պատկերին ։
20 Եւ շիրենց Փառքը խոտակեր արջառի նմանութեանը փոխեցին ։
21 ոՄոռցան իրենց փրկիչ Աստուածը՝ որ մեծամեծ գործքեր ըրաւ Եգիպտոսի մէջ ,
22 Ու հրաշքներ՝ չՔամի երկրին մէջ , և ահաւոր բաներ՝ Կարմիր ծովուն մէջ ։
23 պՈւստի ըսաւ որ զանոնք կորսընցընէ , թէ որ անոր ընտրեալը Մովսէս *մէջտեղը" անոր առջին կայնած չըլլար , անոր բարկութիւնը ետ դարձընելու համար՝ որ չյատկեցընէ ։
24 Նաև ջ—ն ցանկալի երկիրը անարգեցին , ու ռանոր խօսքին չհաւատացին ։
25 Եւ սիրենց վրաններուն մէջ տրտնջեցին . Տէրոջը ձայնը չլսեցին ։
26 վՈւստի անոնց համար † երդում ըրաւ", որ զանոնք անապատին մէջ ձգէ ,
27 Եւ տանոնց սերունդը ազգերուն մէջ ձգէ , ու զանոնք երկիրներուն մէջ ցրուէ ։
28 Եւ րանոնք Բէլփեգովրին յարեցան , ու մեռածներուն զոհերը կերան .
29 Եւ իրենց գործքերովը Տէրը բարկացուցին . ու անոնց վրայ ժանտամահ հասաւ ։
30 ցԵտքը Փենեհէս ելաւ ու դատաստան ըրաւ . և ժանտամահը դադարեցաւ ։
31 Ու աս բանը անոր ւարդարութիւն սեպուեցաւ , ազգէ մինչև ազգ յաւիտեան ։
32 փՆաև բարկացուցին զԱՆԻԿԱՅ Մերիպայի ջուրերուն վրայ . ու քանոնց համար Մովսէսին գէշ եղաւ .
33 օԻնչու որ դառնացուցին անոր հոգին . ան ալ անխորհրդաբար խօսեցաւ իր շրթունքներովը ։

կ Ել. ժե. 24 ։ ժզ. 2 ։ ժէ. 2 ։ Սաղ. հը. 11 ։
հ Թուոց. ժա. 4, 33 ։ Սաղ. հը. 18 ։ ա Կոր. ժ. 6 ։
ձ Թուոց. ժա. 31 ։ Սաղ. հը. 29 ։
ղ Ես. ժ. 16 ։
ճ Թուոց. ժզ. 1, Ա ։
մ Թուոց. ժզ. 31, 32 ։ բ Օր. ժա. 6 ։
յ Թուոց. ժզ. 35, 46 ։
ն Ել. լբ. 4 ։
շ Երեմ. բ. 11 ։ Հռով. ա. 23 ։
ո Սաղ. հը. 11, 12 ։
չ Սաղ. հը. 51 ։ ճե. 23, 27 ։
պ Ել. լբ. 10, 11, 32 ։ բ Օր. թ. 19, 25 ։ ժ. 10 ։ Եզեկ. ի. 13 ։
* Եբր. խրամատին մէջը . Եզեկ. ժգ. 5 ։ իբ. 30 ։
ջ բ Օր. ը. 7 ։ Երեմ. գ. 19 ։ Եզեկ. ի. 6 ։
ռ Եբր. գ. 18 ։
ս Թուոց. ժդ. 2, 27 ։
վ Թուոց. ժդ. 28, Ա ։ Սաղ. ղե. 11 ։ Եզեկ. ի. 15 ։ Եբր. գ. 11, 15 ։
† Եբր. ձեռքը վերցուց . Ել. զ. 8 ։ բ Օր. լբ. 40 ։
տ Ղև. իզ. 33 ։ Սաղ. խդ. 11 ։ Եզեկ. ի. 23 ։
ր Թուոց. իե. 2, 3 ։ լա. 16 ։ բ Օր. դ. 3 ։ իբ. 17 ։ Ովս. թ. 10 ։ Յայտ. բ. 14 ։
ց Թուոց. իե. 7, 8 ։
ւ Թուոց. իե, 11, 12, 13 ։
փ Թուոց. ի. 3, 13 ։ Սաղ. ձա. 7 ։
ք Թուոց. ի. 12 ։ բ Օր. ա. 37 ։ դ. 26 ։
օ Թուոց. ի. 10 ։

34 ᶠ Չկորսընցուցին ան ազգերը , ᵍ որ Տէրը ըսեր էր անոնց .

35 ʰ Հապա հեթանոսներուն հետ խառնուեցան , ու անոնց գործքերը սորվեցան .

36 Եւ ⁱ անոնց կուռքերուն ծառայեցին , ու ʲ անոնք իրենց որոգայթ եղան ։

37 Եւ ᵏ իրենց տղաքները ու աղջիկները ˡ դեւերուն զոհեցին .

38 Ու անմեղ արիւն թափեցին , իրենց տղաքներուն ու աղջիկներուն արիւնը , որոնք որ զոհեցին Քանանու կուռքերուն . ու ᵐ երկիրը պղծուեցաւ արիւնով ։

39 Եւ իրենց գործքերովը ⁿ պղծուեցան , ու իրենց ըրածներովը ᵒ պոռնկութիւն ըրին ։

40 Ուստի ᵖ Տէրոջը բարկութիւնը բորբոքեցաւ իր ժողովուրդին վրայ , ու զզուեցաւ ᑫ իր ժառանգութենէն .

41 Եւ ʳ զանոնք հեթանոսներուն ձեռքը մատնեց . ու զանոնք ատողները տիրեցին անոնց վրայ ։

42 Եւ անոնց թշնամիները նեղեցին զանոնք . ու անոնց ձեռքին տակը խոնարհեցան ։

43 ˢ Շատ անգամ փրկեց զանոնք . բայց անոնք իրենց խորհուրդներովը դառնացուցին Անիկա , ու նուաստացան իրենց անօրէնութիւններուն համար ։

44 Սակայն անիկայ նայեցաւ անոնց նեղութեանը , երբոր ᵗ անոնց աղաղակը լսեց .

45 ᵘ Ու անոնց համար իր ուխտը յիշեց , և ᵛ իր մեծ ողորմութեանը համեմատ ʷ զղջացաւ .

46 Ու ˣ անոնց բոլոր գերեվարներուն առջին գթութիւն գտնել տուաւ անոնց ։

47 ʸ Փրկէ՛ մեզ ո՛վ Տէր՝ մեր Աստուածը . ու ժողվէ՛ մեզ հեթանոսներուն մէջէն . որ քու սուրբ անուանդ գոհութիւն մատուցանենք , ու քու օրհնութեամբդ պարծենանք ։

48 ᶻ Օրհնեա՛լ ըլլայ Տէրը՝ Իսրայէլին Աստուածը յաւիտենէ յաւիտենից . ու բոլոր ժողովուրդը թող ըսէ՝ Ամէն ։ Ալէլուիա ։

## ՍԱՂՄ . ՃԷ

1 Սաղմոսերգուն կը յորդորէ փրկուածները որ զԱստուած գովելու մէջ՝ գ գուշութեամբ զննեն անոր բազմատեսակ խնամքները , 4 որ կ'ընէ ճամբորդներուն . 10 գերիներուն , 17 հիւանդներուն , 23 նաւորդներուն , 33 ու ամէն աստիճանի մարդոց .

1 ᵃ Գոհացէ՛ք Տէրոջմէն , ինչու՝ որ ᵇ բարի է . ինչու որ անոր ողորմութիւնը յաւիտեան է ։

2 Թող ᶜ ասանկ ըսեն Տէրոջը փրկուածները . ᵈ որոնք փրկեց թշնամիին ձեռքէն ,

3 Ու ᵉ ժողվեց անոնք երկիրներէն , արեւելքէն ու արեւմուտքէն , հիւսիսէն ու ᶠ ծովէն ։

4 Անոնք ᵍ մոլորեցան անապատին մէջ՝ անջուր ճամբուն մէջ , բնակելու քաղաք չգտան ։

5 Անօթի ու ծարաւ ըլլալով , հոգինին իրենց ներսի դին կը մարէր ։

6 ʰ Ու Տէրոջը աղաղակեցին իրենց նեղութեանը մէջ , և անիկայ փրկեց զանոնք իրենց տառապանքներէն .

7 Ու անոնց ⁱ ուղիղ ճամբու մէջ առաջնորդեց , որ բնակելու քաղաք երթան ։

8 ʲ Թող գոհանա՛ն Տէրոջմէն իր ողորմութեանը համար , ու մարդոց որդիներուն իր ըրած հրաշքներուն համար .

9 Ինչու որ ᵏ անիկայ ծարաւած հոգին կը խմցընէ , ու անօթեցածը բարութիւնով կը լեցընէ ։

10 Անոնք ˡ խաւարի ու մահուան շուքի մէջ կը նստէին , ᵐ տառապանքով ու երկաթով կապուած էին .

11 Ինչու որ ⁿ Աստուծոյ խօսքերուն հակառակ կեցան , ու ᵒ Բարձրելոյն խորհուրդը անարգեցին ։

12 Ուստի անիկայ ᵖ նեղութիւնով խոնարհեցուց անոնց սիրտը . ինկան , ու ᑫ օգնական մը չկար ։

13 Եւ ʳ Տէրոջը աղաղակեցին իրենց նեղութեանը մէջ , ˢ զանոնք փրկեց իրենց տառապանքներէն ։

14 ᵗ Զանոնք խաւարէն ու մահուան շուքէն հանեց , ու անոնց կապանքները կոտրտեց ։

15 ᵘ Թող գոհանա՛ն Տէրոջմէն իր ողորմութեանը համար , ու մարդոց որդիներուն իր ըրած հրաշքներուն համար .

16 Ինչու որ ᵛ պղնձէ դռները փշրեց , ու երկաթէ նիգերը կոտրտեց ։

17 Յիմարները ʷ իրենց չար ճամբուն համար , ու իրենց անօրէնութիւններուն համար նեղութիւն կը կրեն .

18 ˣ Անոնց անձը ամէն կերակուրէ կը զզուի . ու մինչև ʸ մահուան դռներուն կը մօտենան ։

19 Եւ ᶻ Տէրոջը կ'աղաղակեն իրենց նեղութեանը մէջ , ᵃ կը փրկէ զանոնք իրենց տառապանքներէն ։

20 ᵇ Իր խօսքը կը ղրկէ ու ᶜ կը բժշկէ զանոնք , ու ᵈ կ'ազատէ զանոնք իրենց կործանումէն ։

21 ᵉ Թող գոհանա՛ն Տէրոջմէն իր ողորմութեանը համար , ու մարդոց որդիներուն իր ըրած հրաշքներուն համար .

22 Եւ ᶠ գոհութեան պատարագներ

---

ᶠ Դատ . ա . 21 . 27 . 28 . 29 . Ա .
ᵍ Բ Օր . է . 2 . 16 ։ Դատ . բ . 2 ։
ʰ Դատ . բ . 2 ։ գ . 5 . 6 ։ Ես . բ . 6 ։ ա Կոր . ե . 6 ։
ⁱ Դատ . բ . 12 . 13 . 17 . 19 ։ գ . 6 . 7 ։
ʲ Ել . իգ . 33 ։ Բ Օր . է . 16 ։ Դատ . բ . 3 . 14 . 15 ։
ᵏ Դ Թագ . ժզ . 3 ։ Ես . ծէ . 5 ։ Եզեկ . ժզ . 20 ։ ի . 26 ։
ˡ Ղեւ . ժէ . 7 ։ Բ Օր . լբ . 17 ։ Բ Մն . ժա . 15 ։ Ա Կոր . ժ . 20 ։
ᵐ Թուոց . լե . 33 ։
ⁿ Եզեկ . ի . 18 . 30 . 31 ։
ᵒ Ղեւ . ժէ . 7 ։ Թուոց . ժե . 39 ։ Եզեկ . ի . 30 ։
ᵖ Դատ . բ . 14 . Ա . Սաղ . Հը . 59 . 62 ։
ᑫ Բ Օր . թ . 29 ։
ʳ Դատ . բ . 14 ։ Նէեմ . թ . 27 . Ա .
ˢ Դատ . բ . 16 ։ Նէեմ . թ . 27 . Ա .
ᵗ Դատ . գ . 9 ։ գ . 3 ։ զ . 7 ։ ժ . 10 ։ Նէեմ . թ . 27 . Ա .
ᵘ Ղեւ . իզ . 41 . 42 ։
ᵛ Սաղ . ծա . 1 ։ Կթ . 16 ։ Ես . կգ . 7 ։ Ողբ . գ . 32 ։
ʷ Դատ . բ . 18 ։
ˣ Եզր . թ . 9 ։ Երեմ . խբ . 12 ։
ʸ Ա Մն . ժզ . 35 . 36 ։
ᶻ Սաղ . խա . 13 ։

ᵃ Սաղ . ճզ . 1 ։ ճժը . 1 ։ ճլզ . 1 ։
ᵇ Սաղ . ճժթ . 68 ։ Մատ . ժթ . 17 ։

ᶜ Սաղ . ճզ . 10 ։
ᵈ Սաղ . ճզ . 47 ։ Ես . խգ . 5 . 6 ։ Երեմ . իթ . 14 ։ լա . 8 . 10 ։ Եզեկ . լթ . 27 . 28 ։
ᶠ Կամ՝ հարաւէն ։
ᵍ Հմր 40 ։
ʰ Բ Օր . լբ . 10 ։
ⁱ Հմր 13 . 19 . 28 ։ Սաղ . ծ . 15 ։ Ովս . ե . 15 ։
ʲ Եզր . ը . 21 ։
ᵏ Հմր 15 . 21 . 31 ։
ˡ Սաղ . լդ . 10 ։ Ղուկ . ա . 53 ։
ᵐ Ղուկ . ա . 79 ։
ⁿ Յոբ . լզ . 8 ։
ᵒ Ողբ . գ . 42 ։
ᵖ Սաղ . հգ . 24 ։ ճժթ . 24 ։ Ղուկ . է . 30 ։ Գործ . ի . 27 ։
ᑫ Սաղ . իբ . 11 ։ Ես . կգ . 5 ։
ʳ Հմր 6 . 19 . 28 ։
ˢ Սաղ . կբ . 6 ։ Ճխզ . 7 ։ Գործ . ժբ . 7 . Ա ։ ժզ . 26 . Ա ։
ᵗ Հմր 8 . 21 . 31 ։
ᵘ Ես . խե . 2 ։
ᵛ Ողբ . գ . 39 ։
ʷ Յոբ . լգ . 20 ։
ˣ Յոբ . լգ . 22 ։ Սաղ . թ . 13 ։ Ճը . 3 ։
ʸ Հմր 6 . 13 . 28 ։
ᶻ Դ Թագ . ի . 4 . 5 ։ Սաղ . Ճխէ . 15 . 18 ։ Մատ . ը . 8 ։
ᵃ Սաղ . լ . 2 ։ Ճգ . 3 ։
ᵇ Յոբ . լգ . 28 . 30 ։ Սաղ . լ . 3 ։ խթ . 15 ։ ծգ . 13 ։ Ճգ . 4 ։
ᶜ Հմր 8 . 15 . 31 ։
ᵈ Ղեւ . է . 12 ։ Սաղ . ծ . 14 ։ Ճժզ . 17 ։ Եբր . ժգ . 15 ։

ա Սաղ. Թ. 11 ։ Հգ ։ 28 ։ ճժը. 17 ։

մատուցանեն, ու անոր գործքերը ցնծութեամբ պատմեն ։
23 Նաւերով ծովը իջնողները, մեծ ջուրերու մէջ գործ գործողները,
24 Անոնք Տէրոջը գործքերը ու անոր հրաշքները կը տեսնեն անդունդին մէջը ։

բ Յովն. ա. 4 ։

25 Վասն զի ան կ'ըսէ ու բմրրկալից հովը կը հանէ, որ անոր ալիքները կը բարձրացընէ ։
26 Երկինքը կ'ելլեն ու անդունդը կ'իջնեն. գ անոնց անձերը նեղութենէ կը հալին ։

գ Սաղ. իբ. 14 ։ ճժթ. 28 ։ Նաւ. բ. 10 ։

27 Գինով մարդու պէս կը գողդղան ու կ'երերան, և անոնց բոլոր իմաստութիւնը կը հատնի ։

դ Համր 6 ։ 13 ։ 19 ։

28 դ Ան ատեն Տէրոջը կ'աղաղակեն իրենց նեղութեանը մէջ, ու կը փրկէ զանոնք իրենց տառապանքներէն ։

ե Սաղ. ձթ. 9 ։ Մատ. ը. 26 ։

29 ե Մրրիկը հանդարտութեան կը դարձընէ, ու ալիքները կը դադարին ։
30 Իրենք ալ կ'ուրախանան որ դադարեցան. և կ'առաջնորդէ անոնց՝ իրենց ուզած նաւահանգիստը ։

զ Համր 8 ։ 15 ։ 21 ։

31 զ Թող գոհանան Տէրոջմէն իր ողորմութեանը համար, ու մարդոց որդիներուն իր ըրած հրաշքներուն համար ։
32 Եւ թող բարձրացընեն զանիկայ է ժողովուրդին ժողովքին մէջը, ու ծերոց ատեանին մէջը գովեն զանիկայ ։

է Սաղ. իբ. 22, 25. ճժա. 1 ։

ը Գ Թագ. ժէ. 1 ։ 7 ։

33 ը Գետերը անապատի կը դարձընէ, ու ջուրերուն գնացքները չոր երկրի,

թ Ծն. ժգ. 10 ։ ժդ. 3 ։ ժթ. 25 ։

34 Ու թ պտղաբեր երկիրը աղի երկրի, անոր բնակիչներուն չարութեանը համար ։

ժ Սաղ. ճժգ. 8 ։ Ես. խա. 18 ։

35 ժ Անապատը ջուրերու լիճի կը փոխէ, ու չոր երկիրը ջուրերու գնացքի ։
36 Եւ անօթիները հոն կը բնակեցընէ, որ բնակելու քաղաք հաստատեն,
37 Ու արտեր ցանեն, և այգիներ տնկեն, որ արմտիքի պտուղ բերեն ։

ի Ծն. ժբ. 2 ։ ժէ. 16, 20 ։

38 ի Զանոնք կ'օրհնէ, և անոնք խիստ կը բազմանան, ու անոնց անասունները չպակսեցըներ ։

լ Եզ. ա. 7 ։

խ Դ Թագ. ժ. 32 ։

39 Նորէն խ կը պակսին ու կը ցածնան բռնութենէ, նեղութենէ ու տրտմութենէ ։

ծ Յոբ. ժբ. 21, 24 ։

40 ծ Անարգանք կը թափէ իշխաններուն վրայ, ու զանոնք ճամբայ չունեցող անապատի մէջ կը մոլորեցընէ ։

կ Ա Թագ. բ. 8 ։ Սաղ. ճժգ. 7, 8 ։

հ Սաղ. հբ. 52 ։

41 կ Բայց աղքատը խեղճութենէն կը բարձրացընէ, և հ անոր տոհմերը ոչխարներու հօտի պէս կ'ընէ ։

ձ Յոբ. իբ. 19 ։ Սաղ. ծր. 6 ։ ծը. 10 ։

42 ձ Ուղիղները պիտի տեսնեն և ուրախանան. ու ամէն ղ անօրէնութիւն իր բերանը պիտի գոցէ ։

ղ Յոբ. ե. 16 ։ Սաղ. կդ. 11 ։ Առակ. ժ. 11 ։ Հռով. գ. 19 ։

43 ճ Ո՞վ է իմաստուն, որ ասս բաները պահէ. անիկայ Տէրոջը ողորմութիւնները պիտի հասկընայ ։

ճ Սաղ. կդ. 9 ։ Երեմ. թ. 12 ։ Ովս. ժդ. 9 ։

## ՍԱՂՄ. ՃԸ

1 Դաւիթ քնքլինքը կը քաջալերէ որ զԱստուած գովէ. 5 աղօթքով օգնութիւն կը խնդրէ Աստուծմէ՝ անոր խոստմանը համեմատ. 11 Իր վստահութիւնը Աստուծոյ օգնականութեանը վրայ ։

Դաւիթին երգը ու Սաղմոսը ։

ա Սաղ. ծէ. 7 ։

1 Իմ ա սիրտս պատրաստ է՝ ո՛վ Աստուած, պիտի երգեմ ու սաղմոս պիտի ըսեմ իմ փառքովս ալ ։

բ Սաղ. ծէ. 8—11 ։

2 բ Արթնցի՛ր ո՛վ տաւիղ ու քնար. ես կանուխ պիտի արթըննամ ։
3 Ո՛վ Տէր՝ ժողովուրդոց մէջը քեզ պիտի գովեմ, ու սաղմոս պիտի երգեմ քեզի ազգերուն մէջը ։
4 Վասն զի քու ողորմութիւնդ մեծ է ու երկինքէն վեր, և քու ճշմարտութիւնդ մինչև ամպերը ։

գ Սաղ. ծէ. 5, 11 ։

5 գ Երկինքի վրայ բարձրացի՛ր՝ ո՛վ Աստուած, ու քու փառքդ բոլոր երկրի վրայ ըլլայ ։

դ Սաղ. կ. 5, [illegible] ։

6 դ Որ քու սիրելիներդ փրկուին. աջ ձեռքովդ ապրեցո՛ւր, ու պատասխան տուր մեզի ։

* Կամ՝ Իր սրբարանին մէջը

7 Աստուած *իր սրբութիւնովը" խօսեցաւ. Ես պիտի ցնծամ, Սիւքեմը պիտի բաժնեմ, ու Սոկքովթի հովիտը պիտի չափեմ ։
8 Իմս է Գաղաադը, ու իմս է Մանասէն. և Եփրեմը գլխուս զօրութիւնն է. ե Յուդան իմ օրէնսդիրս է ։

ե Ծն. խթ. 10 ։

9 Մովաբը իմ լուացուելու ամանս է. Եդովմի վրայ պիտի ձգեմ իմ մուճակս. Փղշտացիներուն վրայ ձայնով պիտի ցնծամ ։

զ Սաղ. կ. 9 ։

10 զ Ո՞վ պիտի տանի զիս պարսպաւոր քաղաքը. ո՛վ պիտի առաջնորդէ ինծի մինչև Եդովմ ։
11 Չէ՞ որ դուն՝ ո՛վ Աստուած, որ երեսէ ձգեցիր մեզ, ու մեր զօրքերուն հետ չելլար՝ ո՛վ Աստուած ։
12 Նեղութեան մէջէն մեզի օգնութիւն տուր, վասն զի փուճ է մարդուն փրկութիւնը ։

է Սաղ. Ձ. 12 ։

13 է Աստուծով քաջութիւն պիտի ընենք. ու ան պիտի կոխէ մեր թշնամիները ։

## ՍԱՂՄ. ՃԹ

1 Դաւիթ՝ իր չարախօս թշնամիներուն համար գանգատելով՝ զանոնք կ'անիծէ. 16 անոնց յանցանքը կը պատմէ. 21 իր թշուառութեանը համար գանգատելով՝ օգնութիւն կը խնդրէ, 29 և Աստուծոյ շնորհակալութիւն կը խոստանայ ։

Գլխաւոր երգեցողին. Սաղմոս Դաւիթի ։

1 Ո՛վ իմ օրհնութեանս Աստուածը, լուռ մի՛ կենար.
2 Ինչու որ ամբարշտին բերանը ու նենգաւորին բերանը բացուեցաւ իմ վրաս. ինծի դէմ սուտ լեզուով խօսեցան։
3 Ատելութեան խօսքերով զիս պատեցին, և ինծի հետ անիրաւ տեղը կռուեցան։
4 Իմ սիրոյս փոխարէն հակառակութիւն ըրին ինծի, բայց ես աղօթք կ'ընէի։
5 Նաև բարիին տեղը չար հատուցին, ու իմ սիրոյս տեղը՝ ատելութիւն։
6 Անոր վրայ ամբարիշտ մը վերակացու դիր, և *Սատանան թող կայնի անոր աջ կողմը.
7 Երբոր դատուի, յանցաւոր ելլէ, ու անոր աղօթքը մեղք ըլլայ։
8 Անոր օրերը պակսին, և անոր պաշտօնը ուրիշը առնէ.
9 Անոր որդիները որբ ըլլան, ու անոր կնիկը որբևարի։
10 Եւ անոր որդիները թափառական ըլլան ու մուրան, և իրենց աւերակներէն ելլելով հաց փնտռուեն։
11 Փոխ տուողը առնէ անոր բոլոր ունեցածը, ու օտարները յափշտակեն անոր վաստըկածը։
12 Բնաւ մէկը գթութիւն չընէ անոր, ու մէկը չողորմի անոր որբերուն։
13 Անոր զաւակները սատկելու մատնուին. անոնց անունը գալու ազգին մէջ ջնջուի։
14 Անոր հայրերուն անօրէնութիւնը Տէրոջը առջին յիշուի, և անոր մօրը մեղքը չջնջուի։
15 Անոնք ամէն ժամանակ Տէրոջը առջին ըլլան, որ անոնց յիշատակը երկրէն վերցընէ։
16 Ինչու որ անիկայ ողորմութիւն ընելը չյիշեց, հապա խեղճը ու աղքատը հալածեց, որ սիրտը կոտրածը սպաննէ։
17 Նաև անէծքը սիրեց, ու թող անոր վրայ գայ, և օրհնութիւնը չուզեց, ու թող անկէ հեռու ըլլայ։
18 Անէծքը իր հանդերձին պէս հագաւ. և անիկայ ջուրի պէս անոր փորին մէջը մտնէ, ու ձէթի պէս՝ անոր ոսկորներուն մէջը։
19 Հագնելու հանդերձի պէս, ու միշտ մէջքը կապելու գօտիի պէս ըլլայ անոր։
20 Ինծի հակառակ կեցողներուն ու իմ անձիս համար չար խօսողներուն վարձքը աս ըլլայ Տէրոջմէն։
21 Բայց դուն՝ ո՛վ Տէր Եհովայ, օգնէ ինծի քու անուանդ համար. փրկէ զիս քու ողորմութեանդ բարի ըլլալուն համար։
22 Ինչու որ ես խեղճ ու աղքատ եմ. ու իմ սիրտս ներսի դիս խոցուած է։
23 Ես երկընցող ստուերի պէս անցայ. մարախի պէս թօթվուեցայ։
24 Ծունկերս ծոմապահութենէն տկարացան, ու մարմինս իր պարարտութենէն մաշեցաւ։
25 Ու ես անոնց նախատինք եղայ. երբոր զիս կը տեսնեն, գլուխնին կը շարժեն։
26 Օգնէ՛ ինծի ո՛վ Տէր՝ իմ Աստուածս. փրկէ՛ զիս քու ողորմութեանդ համեմատ.
27 Ու գիտնան թէ՝ քու ձեռքդ աս է, և դուն ըրիր ասիկայ՝ ո՛վ Տէր։
28 Թող անոնք անիծեն՝ բայց դուն օրհնէ՛. երբոր ինծի դէմ ելլեն՝ թող ամչնան. բայց քու ծառադ թող ուրախ ըլլայ։
29 Իմ թշնամիներս թող նախատինք հագնին, ու իրենց ամօթը պատմուճանի պէս վրանին առնեն։
30 Շատ պիտի գոհանամ Տէրոջմէն իմ բերնովս, ու շատերուն մէջը պիտի օրհնեմ անիկայ։
31 Ինչու որ ինքը աղքատին աջ կողմը կը կայնի, որ անոր անձը դատապարտողներէն փրկէ։

## ՍԱՂՄ. ՃԺ

1 Քրիստոսի թագաւորութիւնը, 4 քահանայութիւնը, 5 ու յաղթութիւնը.

Սաղմոս Դաւթի։

1 Տէրը իմ Տէրոջս ըսաւ. Նստէ՛ իմ աջ կողմս, մինչև որ քու թշնամիներդ ոտքերուդ պատուանդան ընեմ։
2 Տէրը քու զօրութեանդ գաւազանը Սիօնէն պիտի խրկէ. քու թշնամիներուդ մէջտեղը դուն տիրէ։
3 Ժողովուրդդ քու զօրութեանդ օրը յօժարակամ պիտի ըլլայ սրբութեան զարդարանքներով. քու երիտասարդներդ արշալոյսին արգանդի ցօղէն" [illegible] պիտի ըլլան քեզի։
4 Տէրը երդում ըրաւ, ու պիտի չզղջայ. Դուն յաւիտեան Մելքիսեդեկի կարգին պէս քահանայ ես։
5 Տէրը քու աջ կողմդ է. անիկայ իր բարկութեան օրը թագաւորներ պիտի ջարդէ։
6 Անիկայ հեթանոսներուն մէջ դատաստան պիտի ընէ. մեռելներով պիտի լեցընէ. շատ երկիրներու վրայ գլուխները պիտի ջարդէ։
7 Ճամբուն մէջ գետէն պիտի

ա Սաղ. ՁԳ. 1։
բ Սաղ. ԼԵ. 7։ ԿԹ. 4։ Յովհ. ԺԵ. 25։
գ Սաղ. ԼԵ. 12։ ԼԸ. 20։
դ Զաք. Գ. 1։
ե Կամ՝ հակառակորդը
զ Առակ. ԻԸ. 9։
է Գործ. Ա. 20։
ը Ել. ԻԲ. 24։
թ Յոբ. Ե. 5։ ԺԸ. 9։
ժ Յոբ. ԺԸ. 19։ Սաղ. ԼԷ. 28։
ի Առակ. Ժ. 7։
լ Ել. Ի. 5։
խ Նեեմ. Դ. 5։ Երեմ. ԺԸ. 23։
ծ Յոբ. ԺԸ. 17։ Սաղ. ԼԴ. 16։
կ Սաղ. ԼԴ. 18։
հ Առակ. ԺԴ. 14։ Եզեկ. ԼԵ. 6։
ձ Թուոց Ե. 22։
ղ Սաղ. ՃԲ. 11։ [illegible]. 4։
ճ Եբր. ԺԲ. 12։
մ Սաղ. ԻԲ. 6, 7։
յ Մատ. ԻԷ. 39։
ն Բ Թագ. ԺԶ. 11, 12։
շ Եսա. ԿԵ. 14։
ո Սաղ. ԼԵ. 26։ ՃԼԲ. 18։
չ Սաղ. ԼԵ. 18։ ՃԺԱ. 1։
պ Սաղ. ԺԶ. 8։ ՀԳ. 23։ ՃԺ. 5։ ՃԻԱ. 5։

ա Մատ. ԻԲ. 44։ Մար. ԺԲ. 36։ Ղուկ. Ի. 42։ Գործ. Բ. 34։ Ա Կոր. ԺԵ. 25։ Եբր. Ա. 13։ Ա Պետ. Գ. 22։ Տե՛ս Սաղ. ԽԵ. 6, 7։
բ Դատ. Ե. 2։
գ Սաղ. ՂԶ. 9։
դ Եբր. երիտասարդութեանդ ցօղը՝ արշալոյսին արգանդէն
ե Թուոց ԻԳ. 19։
զ Եբր. Ե. 6։ Զ. 20։ Է. 17, 21։ Տե՛ս Զաք. Զ. 13։
է Սաղ. ԺԶ. 8։
ը Սաղ. Բ. 5, 12։ Հռով. Բ. 5։ Յայտ. ԺԱ. 18։
թ Սաղ. ԿԸ. 21։ Ամբ. Գ. 13։
ժ Դատ. Է. 5, 6։

ժ Ես. ծգ. 12 ։

խմէ. ժ անոր համար գլուխ պիտի վերցընէ ։

## ՍԱՂՄ. ՃԺԱ

1 Սաղմոսերգուն իր օրինակովը ուրիշները կը յորդորէ զԱստուած գովելու՝ անոր փառաւոր գործքերուն 5 ու շնորհքին համար ։ 10 Աստուծոյ երկիւղը ճշմարիտ իմաստութիւն կը պատճառէ ։

1 Ալէլուիա ։ Բոլոր սրտով ա Տէրը պիտի գովեմ ուղիղներուն ժողովքին ու ժողովուրդին մէջը ։
2 բ Տէրոջը գործքերը մեծ են. անոնք սիրողներուն բոլորէն գ կը քննուին ։
3 Անոր գործքը դ փառաւոր ու վայելուչ է, և անոր արդարութիւնը յաւիտեան կը մնայ ։
4 Յիշել տուաւ իր հրաշքները. ե Տէրը ողորմած ու գթած է ։
5 զ Կերակուր տուաւ իրմէն վախցողներուն. իր ուխտը յաւիտեան կը յիշէ ։
6 Իր գործքերուն զօրութիւնը ցուցուց իր ժողովուրդին, անոնց տալով ազգերուն ժառանգութիւնը ։
7 Անոր ձեռքերուն գործքերը է ճշմարտութիւն ու իրաւունք են. ը անոր բոլոր պատուիրանքները հաւատարիմ են.
8 թ Յաւիտեանս յաւիտենից հաստատուած են. ժ ճշմարտութեամբ և ուղղութեամբ եղած են ։
9 ի Փրկութիւն ղրկեց իր ժողովուրդին. իր ուխտը յաւիտեան պատուիրեց. լ Սուրբ ու ահաւոր է անոր անունը ։
10 խ Իմաստութեան սկիզբը Տէրոջը վախն է. բարի խոհեմութիւն ունին անոնք ամէնը՝ որ անոնք կ՚ընեն. անոր օրհնութիւնը յաւիտեան կը մնայ ։

ա Սաղ. լե. 18 ։ իթ. 5 ։ ճէ. 32 ։ ճթ. 30 ։ ճխթ. 1 ։
բ Յոբ. լը. լթ. խ. խա ։ Սաղ. ղբ. 5 ։ ճլթ. 14 ։ Յայտ. ժե. 3 ։
գ Սաղ. ճխբ. 5 ։
դ Սաղ. ճխե. 4, 5, 10 ։
ե Սաղ. իզ. 5 ։ ճգ. 8 ։
զ Մատ. զ. 26, 33 ։
է Յայտ. ժե. 3 ։
ը Սաղ. ժթ. 7 ։
թ Ես. խ. 8 ։ Մատ. ե. 18 ։
ժ Սաղ. ժթ. 9 ։ Յայտ. ժե. 3 ։
ի Մատ. ա. 21 ։ Ղուկ. ա. 68 ։
լ Ղուկ. ա. 49 ։
խ Օր. դ. 6 ։ Յոբ. իը. 28 ։ Առակ. ա. 7 ։ թ. 10 ։ Ժող. ժբ. 13 ։

## ՍԱՂՄ. ՃԺԲ

1 Աստուածպաշտութիւնը թէ՛ աս կեանքիս 4 և թէ հանդերձեալին խոստմունքները ունի ։ 10 Բարեպաշտ մարդուն յաջողութիւնը՝ չարերուն տրտմութիւն պիտի պատճառէ ։

1 Ալէլուիա ։ ա Երանի՜ այն մարդուն՝ որ Տէրոջմէն կը վախնայ, ու բ անոր պատուիրանքներուն շատ կը հաւնի ։
2 գ Անոր սերունդը զօրաւոր պիտի ըլլայ երկրի վրայ. դ ուղիղներուն ցեղը պիտի օրհնուի ։
3 Առատութիւն ու հարստութիւն պիտի ըլլայ անոր տանը մէջ, ու անոր արդարութիւնը յաւիտեան պիտի մնայ ։
4 ե Խաւարի մէջ լոյս կը ծագի ուղիղներուն. ողորմած ու գթած ու արդար է ։
5 զ Բարի մարդը կ՚ողորմի ու փոխ կու տայ. իր բաները է իրաւունքով կը կատարէ ։
6 Յիրաւի ը անիկայ յաւիտեան պիտի չսասանի. թ Արդարին յիշատակը յաւիտեան պիտի մնայ.
7 ժ Անիկայ գէշ լուրէն չվախնար. անոր սիրտը հաստատ է, ու ի Տէրոջը կը յուսայ ։
8 Անոր սիրտը հաստատուած է, ու չվախնար, մինչև որ լ իր թշնամիներուն [illegible] տեսնէ ։
9 խ Տարածեց՝ աղքատներուն տուաւ. ծ անոր արդարութիւնը յաւիտեան կը մնայ. կ անոր եղջիւրը փառքով պիտի բարձրանայ ։
10 հ Ամբարիշտը պիտի տեսնէ ու բարկանայ, ձ իր ակռաները պիտի կճըռցընէ ու ղ պիտի հալի. ճ ամբարիշտներուն ցանկութիւնը պիտի կորսուի ։

ա Սաղ. ճիը. 1 ։
բ Սաղ. ճժթ. 16, 35, 47, 70, 143 ։
գ Սաղ. իե. 13 ։ լէ. 26 ։ ճբ. 28 ։
դ Մատ. զ. 33 ։
ե Յոբ. ժա. 17 ։ Սաղ. ղէ. 11 ։
զ Սաղ. լէ. 26 ։ Ղուկ. զ. 35 ։
է Եփես. ե. 15 ։ Կող. դ. 5 ։
ը Սաղ. ժե. 5 ։
թ Առակ. ժ. 7 ։
ժ Առակ. ա. 33 ։
ի Սաղ. կդ. 10 ։
լ Առակ. գ. 25 ։
խ Սաղ. ծթ. 10 ։ ճժը. 7 ։
ծ Բ Կոր. թ. 9 ։
կ Բ Օր. իդ. 13 ։ Հռմ. 3 ։
հ Սաղ. հե. 10 ։
ձ Տես Ղուկ. ժգ. 28 ։
ղ Սաղ. լէ. 12 ։
ճ Սաղ. ծը. 7, 8 ։
մ Առակ. ժ. 28 ։ ժա. 7 ։

## ՍԱՂՄ. ՃԺԳ

1 Աստուած գովելու յորդորանք մը իր գերազանցութեանը 6 ու իր ողորմութեանը համար ։

1 Ալէլուիա ։ ա Օրհնեցէ՛ք, ո՛վ Տէրոջը ծառաները, օրհնեցէք Տէրոջը անունը ։
2 բ Օրհնեա՛լ ըլլայ Տէրոջը անունը ասկէ ետև մինչև յաւիտեան ։
3 գ Արևելքէն մինչև արևմուտք օրհնեա՛լ ըլլայ Տէրոջը անունը ։
4 Տէրը դ բարձր է բոլոր ազգերուն վրայ. ե անոր փառքը երկինքէն վեր է ։
5 զ Մեր Տէր Աստուծոյն պէս ո՛վ կայ, որ բարձրութեան մէջ կը բնակի.
6 է Որ երկինքի ու երկրի մէջ եղած բաները տեսնելու համար կը խոնարհի.
7 ը Որ աղքատը փոշիէն վեր կը վերցնէ, ու տնանկը աղբանոցէն կը բարձրացնէ,
8 Որ թ [illegible] նստեցընէ իշխաններուն հետ՝ իր ժողովուրդին իշխաններուն հետը.
9 Որ ժ ամուլ կնիկը տունը կը բնակեցընէ, ու որդիներու ուրախ մայր կ՚ընէ ։ Ալէլուիա ։

ա Սաղ. ճլե. 1 ։
բ Դան. բ. 20 ։
գ Ես. ծթ. 19 ։ Մաղ. ա. 11 ։
դ Սաղ. ղէ. 9 ։ ղթ. 2 ։
ե Սաղ. ը. 1 ։
զ Սաղ. իթ. 6 ։
է Սաղ. ժա. 4 ։ ճլը. 6 ։ Ես. ծէ. 15 ։
ը Ա Թագ. բ. 8 ։ Սաղ. ճէ. 41 ։
թ Յոբ. լզ. 7 ։
ժ Ա Թագ. բ. 5 ։ Սաղ. կը. 6 ։ Ես. ծդ. 1 ։ Գաղ. դ. 27 ։

## ՍԱՂՄ. ՃԺԴ

1—8 Անխօս էակներուն օրինակովը՝ Աստուծմէ վախնալու յորդորանք մը ։

1 ա Երբոր Իսրայէլը Եգիպտոսէն դուրս ելաւ, ու Յակոբին տունը բ օտարալեզու ժողովուրդին մէջէն,
2 գ Յուդան անոր սրբարանը՝ ու Իսրայէլը անոր իշխանութիւնը եղաւ ։
3 դ Ծովը տեսաւ ու փախաւ. ե Յորդանանը ետ դարձաւ ։
4 զ Լեռները խոյերու պէս ցատկը-

ա Ել. ժգ. 3 ։
բ Սաղ. իա. 5 ։
գ Ել. զ. 7 ։ ժթ. 6 ։ իե. 8 ։ իթ. 45, 46 ։ բ Օր. իէ. 9 ։
դ Ել. ժդ. 21 ։ Սաղ. հէ. 16 ։
ե Յես. գ. 13, 16 ։
զ Սաղ. իթ. 6 ։ Ամբ. գ. 6 ։

տեցին, ու բլուրները գառնուկնե-
րու պէս։
5 ե Քեզի ի՞նչ եղաւ ով ծով՝ որ
փախար, և դուն Յորդանան՝ որ
ետ դարձար։
6 Ո՛վ լեռներ՝ խոյերու պէս
ցատկռտեցիք, ու դուք բլուրներ՝
գառնուկներու պէս։
7 Սարսափէ ով երկիր՝ Տէրոջը ե-
րեսէն՝ Յակոբին Աստուծոյն երե-
սէն,
8 ը Ան որ վէմը ջուրերու լիճի
դարձուց, ու ապառաժը ջուրերու
աղբիւրի։

## ՍԱՂՄ. ՃԺԵ

1 Սաղմոսերգուն Աստուծոյ ճշմարիտ փառքը, 4 ու կուռքերուն ունայնութիւնը ցուցընելով, 9 կը յորդորէ Աստուծոյ վստահելու։ 12 և անոր գոհութիւն մատուցանելու՝ իր բարերարութիւններուն համար։

1 ա Ոչ թէ մեզի ով Տէր՝ չէ թէ մե-
զի, հապա քու անուանդ
փառք տուր, քու ողորմութեանդ
ու ճշմարտութեանդ համար։
2 Ինչո՞ւ համար հեթանոսները ը-
սեն թէ՝ բ Ո՞ւր է հիմա անոնց Աս-
տուածը։
3 գ Բայց մեր Աստուածը երկինքն
է. անիկայ իր բոլոր ուզածը ըրաւ։
4 դ Անոնց կուռքերը արծաթ ու
ոսկի են. մարդու ձեռքի գործքեր
են.
5 Բերան ունին՝ բայց չեն խօսիր.
աչքեր ունին՝ բայց չեն տեսներ.
6 Ականջներ ունին՝ բայց չեն լսեր,
քիթ ունին՝ բայց հոտ չեն առներ.
7 Ձեռքեր ունին՝ բայց չեն շօշա-
փեր. ոտքեր ունին՝ բայց չեն քա-
լեր, ու իրենց կոկորդովը ձայն չեն
հաներ։
8 ե Անոնց նման * ըլլան անոնք շի-
նողները, ու բոլոր անոնց յուսա-
ցողները։
9 զ † Ո՛վ Իսրայէլ՝ Տէրոջը յուսա՛.
է ան է անոնց օգնութիւնը ու աս-
պարը։
10 ‡ Ո՛վ Ահարոնի տունը՝ Տէրոջը
յուսացէ՛ք. ան է անոնց օգնու-
թիւնը ու ասպարը։
11 ‖ Ո՛վ Տէրոջմէ վախցողներ՝ Տէ-
րոջը յուսացէ՛ք. ան է անոնց օգ-
նութիւնը ու ասպարը։
12 Տէրը մեզ կը յիշէ, ու պիտի
օրհնէ, Իսրայէլի տունը պիտի օրհ-
նէ, Ահարոնի տունը պիտի օրհնէ.
13 ը Տէրոջմէ վախցողները պիտի
օրհնէ, պզտիկները մեծերուն հետ։
14 Տէրը ձեզի բարիք պիտի աւելցը-
նէ, ձեզի ու ձեր որդիներուն։
15 թ Օրհնեա՛լ ըլլաք դուք Տէրոջմէն,
ժ ան որ երկինքը ու երկիրը ստեղ-
ծեց։
16 Երկնից երկինքը Տէրոջն է, բայց
երկիրը մարդոց որդիներուն տուաւ։
17 ի Մեռելները Տէրը չեն օրհներ.
ոչ ալ ան ամէնը, որ § գերեզմանը
կ'իջնեն։
18 լ Բայց մենք Տէրը պիտի օրհնենք,
ասկէ ետև մինչև յաւիտեան։ Ա-
լէլուիա։

## ՍԱՂՄ. ՃԺԶ

1 Սաղմոսերգուն կը խոստովանի իր սէրը ու իր պարտաւորութիւնը առ Աստուած՝ անոր փրկութեանը համար։ 12 Ուխտ կ'ընէ որ շնորհակալութիւն մատուցանէ Աստուծոյ։

1 * Սիրահար եմ ես", ինչու որ Տէրը
իմ ձայնս ու աղաչանքս լսեց.
2 Ինչու որ անիկայ իր ականջը ին-
ծի խոնարհեցուց. ու իմ օրերուս
մէջ զանոր պիտի կանչեմ։
3 ա Մահուան լարերը զիս պատե-
ցին, ու գերեզմանին վիշտերը զիս
գտան. նեղութիւն ու տրտմու-
թիւն գտայ։
4 Բայց ես Տէրոջը անունը կան-
չեցի, կ'աղաչեմ՝ ով Տէր, փրկէ
իմ անձս։
5 բ Ողորմած ու գ արդար է Տէրը,
և մեր Աստուածը գթած է։
6 Տէրը միամիտները կը պահէ. ես
խեղճ եղայ, ու անիկայ զիս ազա-
տեց։
7 Ո՛վ իմ անձս՝ դարձի՛ր քու
դ հանգստութեանդ, ինչու որ
ե Տէրը քեզի բարիք ըրաւ։
8 զ Վասն զի դուն իմ անձս մա-
հուանէ փրկեցիր, իմ աչքերս ար-
ցունքէն, ու իմ ոտքերս գայթակ-
ղելէն։
9 Տէրոջը առջևը պիտի քալեմ
է կենդանիներուն երկրին մէջը։
10 ը Հաւատացի՝ անոր համար խօ-
սեցայ. ես խիստ թշուառացայ։
11 թ Իմ շփոթութեանս մէջ ըսի
թէ՝ ժ Ամէն մարդ սուտ է։
12 Ի՞նչ հատուցանեմ Տէրոջը՝ ա-
նոր բոլոր ինծի ըրած բարութեանը
փոխարէն։
13 Փրկութեան բաժակը պիտի
առնեմ, ու Տէրոջը անունը պիտի
կանչեմ։
14 ի Իմ ուխտերս Տէրոջը պիտի հա-
տուցանեմ իր բոլոր ժողովուրդին
առջին։
15 լ Պատուական է Տէրոջը առջին
իր սուրբերուն մահը։
16 Կ'աղաչեմ ով Տէր, ի ինչու որ
ես քու ծառադ եմ, ես քու ծա-
ռադ եմ, ու ծ քու աղախինիդ որ-
դին. դուն իմ կապերս արձըկե-
ցիր։
17 կ Գոհութեան պատարագ պիտի
մատուցանեմ քեզի, ու Տէրոջը
անունը պիտի կանչեմ։

ե Սմբ. դ. 8։
ը Ել. ժէ. 6։ Թուոց. ի. 11։ Սաղ. ճէ. 35։
ա Տես Եսայ. խը. 11։ Եզեկ. լզ. 32։
բ Սաղ. խբ. 3. 10։ Յովէլ. բ. 17։
գ Սաղ. ժգ. 26։ Սաղ. ճլե. 6։ Դան. դ. 35։
դ Օր. դ. 28։ Սաղ. ճլե. 15. 16. 17։ Երեմ. ժ. 3, &c։
ե Սաղ. ճլե. 18։ Եսայ. խդ. 9. 10. 11։ Յովն. բ. 8։ Ամբ. բ. 18. 19։
* Կամ՝ պիտի ըլլան
զ Տես Սաղ. ճժբ. 2. 3. 4։ ճլե. 19. 20։
† Կամ՝ Իսրայէլը Տէրոջը կը յուսայ.
է Սաղ. լդ. 20։ Առակ. լ. 5։
‡ Կամ՝ Ահարոնի տունը Տէրոջը կը յուսայ.
‖ Կամ՝ Տէրոջմէ վախցողները Տէրոջը կը յուսան.
ը Սաղ. ճիը. 1. 4։
թ Ծն. ժդ. 19։
ժ Ծն. ա. 1։ Սաղ. ղզ. 5։
ի Սաղ. զ. 5։ ձը. 10. 11. 12։ Եսա. լը. 18։
§ Եբր. լռութիւնը
լ Սաղ. ճժգ. 2։ Դան. բ. 20։
* Կամ՝ Տէրը կը սիրեմ. Սաղ. ժը. 1։
ա Սաղ. ժը. 4, 5, 6։
բ Սաղ. ճզ. 8։
գ Եզր. թ. 15։ Նէեմ. թ. 8։ Սաղ. ճժթ. 137։ ճխե. 17։
դ Երեմ. զ. 16։ Մատ. ժա. 29։
ե Սաղ. ժգ. 6։ ձժթ. 17։
զ Սաղ. ծզ. 13։
է Սաղ. իէ. 13։
ը Բ Կոր. դ. 13։
թ Սաղ. լա. 22։
ժ Հռով. գ. 4։
ի Հմր 18։ Սաղ. իբ. 25։ Յովն. բ. 9։
լ Սաղ. հբ. 14։
ի Սաղ. ճիգ. 12։ ճժթ. 125։ ձխգ. 12։
ծ Սաղ. ձզ. 16։
կ Ղև. է. 12։ Սաղ. ծ. 14։ ճէ. 22։

18 Իմ ուխտերս Տէրոջը պիտի հատուցանեմ իր բոլոր ժողովուրդին առջին,
19 Տէրոջը տանը սրահներուն մէջը, քու մէջդ՝ ով Երուսաղէմ։ Ալէլուիա։

## ՍԱՂՄ. ՃԺԷ

1, 2 Աստուած փառաւորելու յորդորանք մը իր ողորմութեանը ու ճշմարտութեանը համար։

1 Օրհնեցէ՛ք Տէրը՝ ով բոլոր ազգեր, գովեցէ՛ք անիկայ՝ ով բոլոր ժողովուրդներ.
2 Վասն զի անոր ողորմութիւնը մեր վրայ մեծ է, ու Տէրոջը ճշմարտութիւնը յաւիտեան է։ Ալէլուիա։

## ՍԱՂՄ. ՃԺԸ

1 Աստուծոյ ողորմութեանը համար զինքը փառաւորելու յորդորանք մը։ 5 Սաղմոսերգուն իր փորձառութեամբը կը ցուցնէ թէ ո՛րչափ աղէկ բան է Աստուծոյ ապաւինիլը։ 19 Սաղմոսերգուին օրինակովը՝ Քրիստոսին իր թագաւորութեամբը գալը կը ցուցուի։

1 Գոհացէ՛ք Տէրոջմէն, ինչու որ բարի է. ինչու որ անոր ողորմութիւնը յաւիտեան է։
2 Իսրայէլը թող ըսէ՛ թէ՝ Անոր ողորմութիւնը յաւիտեան է։
3 Ահարոնին տունը թող ըսէ՛ թէ՝ Անոր ողորմութիւնը յաւիտեան է։
4 Տէրոջմէ վախցողները թող ըսեն թէ՝ Անոր ողորմութիւնը յաւիտեան է։
5 Նեղութեան մէջ Տէրոջը կանչեցի, և Տէրը պատասխան տուաւ ինծի, լայնարձակ տեղ մը հանելով։
6 Տէրը իմ հետս է, չեմ վախնար. մարդը ինծի ի՞նչ կրնայ ընել։
7 Տէրը իմ օգնականներուս հետ մէկտեղ իմ հետս է, ու ես իմ թշնամիներուս [illegible] պիտի տեսնեմ։
8 Աղէկ է Տէրոջը յուսալ, քան թէ մարդոց ապաւինիլ։
9 Աղէկ է Տէրոջը յուսալ, քան թէ իշխաններուն ապաւինիլ։
10 Բոլոր ազգերը զիս պաշարեցին. բայց Տէրոջը անունովը պիտի ջարդեմ անոնք։
11 Իմ բոլորտիքս առին, և զիս պաշարեցին. բայց Տէրոջը անունովը պիտի ջարդեմ անոնք։
12 Մեղուներու պէս իմ բոլորտիքս առին. փուշերու կրակի պէս մարեցան. բայց Տէրոջը անունովը պիտի ջարդեմ անոնք։
13 Սաստիկ հրեցիր զիս, որ վար իյնամ. բայց Տէրը օգնեց ինծի։
14 Տէրը իմ զօրութիւնս ու սաղմոսս է, ու իմ փրկութիւնս եղաւ։
15 Արդարներուն բնակարաններուն մէջը ցնծութեան ու փրկութեան ձայն կայ. Տէրոջը աջ ձեռքը զօրութիւն կը գործէ։
16 Տէրոջը աջ ձեռքը բարձր է. Տէրոջը աջ ձեռքը զօրութիւն կը գործէ։
17 Պիտի չմեռնիմ, հապա պիտի ապրիմ, ու Տէրոջը գործքերը պատմեմ։
18 Տէրը զիս շատ խրատեց, բայց մահուան չմատնեց զիս։
19 Բացէ՛ք ինծի արդարութեան դռները. անոնց մէջը պիտի մտնեմ, ու Տէրոջը գոհութիւն մատուցանեմ։
20 Աս է Տէրոջը դուռը, արդարները ասկէ պիտի մտնեն։
21 Կը գոհանամ քեզմէ որ ինծի պատասխան տուիր, ու ինծի փրկութիւն եղար։
22 Այն քարը՝ որ շինողները անարգեցին, անկիւնին գլուխը եղաւ։
23 Ասիկայ Տէրոջմէն եղաւ. զարմանալի է ասիկայ մեր աչքերուն։
24 Աս այն օրն է, որ Տէրը ստեղծեց. ցնծանք և ուրախ ըլլանք անոր մէջը։
25 Հիմա կ'աղաչեմ ով Տէր՝ փրկէ՛, հիմա կ'աղաչեմ ով Տէր՝ յաջողէ՛։
26 Օրհնեա՛լ ըլլայ ան որ Տէրոջը անունովը կու գայ. օրհնեցինք ձեզ Տէրոջը տունէն։
27 Տէրը Աստուած է, և լոյս կը ցուցնէ մեզի. զոհի անասունները չուաններով կապեցէ՛ք, ու սեղանին եղջիւրներուն մօտեցուցէ՛ք։
28 Դուն ես իմ Աստուածս, ու քեզի գոհութիւն պիտի մատուցանեմ. ով իմ Աստուածս՝ քեզ պիտի բարձրացընեմ։
29 Գոհացէք Տէրոջմէն, ինչու որ բարի է. ինչու որ անոր ողորմութիւնը յաւիտեան է։

## ՍԱՂՄ. ՃԺԹ

1—176 Զանազան աղօթքներ, գովաբանութիւններ, ու հնազանդութեան խոստմունքներ։

### ԱԼԵՓ

1 Երանի՜ ճամբով ամբիծներուն՝ որ Տէրոջը օրէնքին մէջ կը քալեն։
2 Երանի՜ անոնց՝ որ անոր վկայութիւնները կը պահեն, ու բոլոր սրտով զինքը կը խնդրեն,
3 Եւ անօրէնութիւն չեն ըներ, հապա անոր ճամբաներուն մէջը կը քալեն։
4 Դուն պատուիրեցիր որ շատ ըզգուշութեամբ քու հրամաններդ պահենք։
5 Երանի թէ իմ ճամբաներս յաջողին, որ քու կանոններդ պահեմ։

Հ Հմր 14։
Յ Սաղ. ՂԶ. 8։ Ճ. 4։ ՃԼԵ. 2։
Ա Հռով. ԺԵ. 11։
Բ Սաղ. Ճ. 5։
Ա Մն. ԺԶ. 8, 34։ Սաղ. ՃԶ. 1։ ՃԷ. 1։ ՃԼԶ. 1։
Բ Տես Սաղ. ՃԺԵ. 9, 10։
Գ Սաղ. ՃԻ. 1։
Դ Սաղ. ԺԸ. 19։
Ե Սաղ. ԻԷ. 1։ ԾԶ. 4, 11։ ՃԽԶ. 5։ Եբր. ԺԳ. 6։
Զ Սաղ. ԾԴ. 4։
Է Սաղ. ԽԹ. 10։
Ը Սաղ. Խ. 4։ Կր. Ց. 9։ Երեմ. ԺԷ. 5, 7։
Թ Սաղ. ՃԽԶ. 3։
Ժ Սաղ. ՁԸ. 17։
Ի Բ Օր. Ա. 44։
Լ Ժող. Է. 6։ Նաւ. Ա. 10։
Խ Ել. ԺԵ. 2։ Ես. ԺԲ. 2։
Ծ Ել. ԺԵ. 6։
Կ Սաղ. Զ. 5։ Ամբ. Ա. 12։
Հ Սաղ. ՀԳ. 28։
Ձ Բ Կոր. Զ. 9։
Ղ Ես. ԻԶ. 2։
Ճ Սաղ. ԻԴ. 7։
Մ Ես. ԼԵ. 8։ Յայտ. ԻԱ. 27։ ԻԲ. 14, 15։
Յ Հմր 14։
Ն Մատ. ԻԱ. 42։ Մար. ԺԲ. 10։ Ղուկ. Ի. 17։ Գործ. Դ. 11։ Եփս. Բ. 20։ Ա Պետ. Բ. 4, 7։
Շ Մատ. ԻԱ. 9։ ԻԳ. 39։ Մար. ԺԱ. 9, 10։ Ղուկ. ԺԹ. 38։ Տես Զաք. Դ. 7։
Ո Եսթ. Ը. 16։ Ա Պետ. Բ. 9։
Չ Ել. ԺԵ. 2։ Ես. ԻԵ. 1։
Պ Հմր 1։
Ա Սաղ. ՃԻԸ. 1։
Բ Ա Յով. Գ. 9։ Ե. 18։

6 Այն ատենը պիտի չամչնամ, երբոր քու բոլոր պատուիրանքնե-
րուդ զգուշութիւն ընեմ։
7 Պիտի գովեմ քեզ ուղիղ սըր-
տով, երբոր քու արդար դատաս-
տաններդ սորվիմ։
8 Քու կանոններդ պիտի պահեմ.
իս բոլորովին մի՛ թողուր։

ՊԷԹ

9 Երիտասարդը ինչո՞վ մաքրէ իր
ճամբան. քու խօսքիդ համեմատ
անոր զգուշութիւն ընելով։
10 Իմ բոլոր սրտովս խնդրեցի
քեզ, մի՛ թողուր զիս որ քու
պատուիրանքներէդ մոլորիմ։
11 Իմ սրտիս մէջը պահեցի քու
խօսքերդ, որ չմեղանչեմ քեզի դէմ։
12 Օրհնեա՜լ ես դուն՝ ո՛վ Տէր,
սորվեցուր ինծի քու կանոններդ։
13 Իմ շրթունքներովս պատմեցի
քու բերնիդ բոլոր դատաստաննե-
րը։
14 Քու վկայութիւններուդ ճամ-
բովը ուրախացայ, որպէս թէ ամէն
կերպ հարստութիւնով։
15 Քու հրամաններուդ վրայով
պիտի մտածեմ, և քու ճամբա-
ներդ պիտի դիտեմ։
16 Քու կանոններովդ պիտի ուրա-
խանամ, ու քու խօսքդ պիտի չը-
մոռնամ։

ԳԻՄԷԼ

17 Բարութիւն ըրէ քու ծառա-
յիդ, որ ապրիմ ու քու խօսքդ
պահեմ։
18 Բա՛ց իմ աչքերս, որ քու օրէն-
քէդ հրաշքներ տեսնեմ։
19 Պանդուխտ եմ ես երկրի վրայ.
մի՛ ծածկեր ինծմէ քու պատուի-
րանքներդ։
20 Իմ անձս կը նեղուի ամէն ժա-
մանակ քու դատաստաններուդ
ցանկանալէն։
21 Դուն սաստեցիր անիծած ամ-
բարտաւանները, քու պատուի-
րանքներէդ մոլորողները։
22 Նախատինքը ու անարգանքը
վերցո՛ւր ինծմէ, ինչու որ քու վը-
կայութիւններդ պահեցի։
23 Իշխաններ ալ կը նստէին ու ին-
ծի դէմ կը խօսէին. բայց քու ծա-
ռադ՝ քու կանոններուդ վրայով
կը մտածէր։
24 Քու վկայութիւններդ ալ իմ
ուրախութիւնս՝ ու իմ խորհրդա-
կաններս են։

ՏԱԼԷԹ

25 Իմ անձս հողին կը փակչի.
կենդանացո՛ւր զիս քու խօսքիդ
համեմատ։
26 Իմ ճամբաներս պատմեցի, ու
դուն ինծի պատասխան տուիր.
սորվեցուր ինծի քու կանոններդ։
27 Քու հրամաններուդ ճամբան ին-
ծի իմացուր, և քու սքանչելիքնե-
րուդ վրայով պիտի * մտածեմ։
28 Իմ անձս տրտմութենէն կը
հալի. հաստատէ՛ զիս քու խօսքիդ
համեմատ։
29 Ստութեան ճամբան հեռացո՛ւր
ինծմէ, ու քու օրէնքդ շնորհէ՛ ին-
ծի։
30 Ճշմարտութեան ճամբան ընտ-
րեցի, ու քու դատաստաններդ իմ
առջևս դրի։
31 Քու վկայութիւններուդ յարե-
ցայ, ո՛վ Տէր՝ զիս մի՛ ամչցըներ։
32 Քու պատուիրանքներուդ ճամ-
բուն մէջ պիտի վազեմ. ինչու որ
դուն իմ սիրտս պիտի լայնցընես։

ՀԷ

33 Ո՛վ Տէր՝ սորվեցուր ինծի քու
կանոններուդ ճամբան. ու մինչև
վերջը պիտի պահեմ անիկայ։
34 Իմաստուն ըրէ զիս, որ քու օ-
րէնքդ պահեմ, ու բոլոր սրտով
անիկայ ՚ի գործ դնեմ։
35 Առաջնորդէ՛ ինծի քու պատուի-
րանքներուդ շաւիղին մէջ. ինչու
որ անոր հաւնեցայ։
36 Իմ սիրտս քու վկայութիւննե-
րուդ յօժարեցո՛ւր, ու չէ՛ թէ ագա-
հութեան։
37 Ե՛տ դարձուր իմ աչքերս, որ
ունայն բան չտեսնեն. և զիս քու
ճամբուդ մէջ կենդանացո՛ւր։
38 Հաստատէ՛ քու խօսքդ քեզմէ
վախցող ծառայիդ վրայ։
39 Ե՛տ դարձուր ինծմէ իմ նախա-
տինքս, ուսկից որ կը վախնամ,
ինչու որ քու դատաստաններդ բա-
րի են։
40 Ահա՛ ցանկացայ քու հրաման-
ներուդ. քու արդարութեանդ մէջ
կենդանացո՛ւր զիս։

ՎԱՎ

41 Ո՛վ Տէր՝ թող իմ վրաս գայ
քու ողորմութիւնդ, և քու փըր-
կութիւնդ քու խօսքիդ համեմատ։
42 Ու ես խօսքով պատասխան պիտի
տամ իս նախատողին. վասն զի
քու խօսքիդ յուսացած եմ։
43 Եւ ճշմարտութեան խօսքը բնաւ
մի՛ հեռացըներ իմ բերնէս. ինչու
որ քու դատաստաններուդ յուսա-
ցած եմ։
44 Ու քու օրէնքդ միշտ պիտի պա-
հեմ յաւիտեանս յաւիտենից։
45 Եւ լայնարձակ տեղի մէջ պիտի
քալեմ, քանզի քու հրամաններդ
խնդրեցի։

գ Յոբ. իը. 26։ ա Յօհ. բ. 28։
դ Բ Մն. ժե. 15։
ե Հմր 21, 118։
զ Սաղ. լէ. 31։ Ղու. բ. 19, 51։
է Հմր 26, 33, 64, 68, 108։ 124, 135։ Սաղ. իե. 4։
ը Սաղ. լդ. 11։
թ Սաղ. ա. 2։ Հմր 23, 48, 78։
ժ Սաղ. ա. 2։ Հմր 47, 70, 77։
ի Սաղ. ճժգ. 7։
լ Ծն. խէ. 9։ ա Մն. իթ. 15։ Սաղ. լթ. 12։ բ Կոր. ե. 6։ Եբր. ժա. 13։
խ Սաղ. խբ. 1, 2։ կգ. 1։ ձգ. 2։ Հմր 40, 131։
ծ Հմր 10, 110, 118։
կ Սաղ. լթ. 8։
հ Հմր 15։
ձ Հմր 77, 92։
ղ Սաղ. խդ. 25։
ճ Հմր 40։ Սաղ. ճխգ. 11։
մ Հմր 12։ Սաղ. իե. 4։ իէ. 11։ ձգ. 11։
* Կամ՝ խօսիմ. Սաղ. ճխե. 5, 6։
յ Սաղ. ճէ. 26։
ն Բ Թագ. զ. 29։ Ես. կ. 5։ բ Կոր. զ. 11։
շ Հմր 12։
ո Հմր 112։ Մատ. ժ. 22։ Յայտ. բ. 26։
չ Հմր 73։ Առակ. բ. 6։ Յակ. ա. 5։
պ Եզեկ. լգ. 31։ Մար. է. 21, 22։ Ղու. ժբ. 15։ ա Տիմ. զ. 10։ Եբր. ժգ. 5։
ջ Ես. լգ. 15։
ռ Առակ. իդ. 5։
ս Հմր 40։
վ Բ Թագ. է. 25։
տ Հմր 20։
ր Հմր 25, 37, 88, 107, 149, 156, 159։
ց Սաղ. ճզ. 4։ Հմր 77։

46 Ու շքու վկայութիւններդ թագաւորներուն առջին պիտի խօսիմ, և պիտի չամչնամ ։

47 Ու ոպիտի ուրախանամ քու պատուիրանքներովդ, որոնք սիրեցի ։

48 Եւ ձեռքերս դէպ 'ի քու պատուիրանքներուդ պիտի վերցընեմ, որոնք սիրեցի, ու չքու կանոններուդ վրայով պիտի մտածեմ ։

ԶԱՅԻՆ

49 Յիշէ քու ծառայիդ եղած խօսքը, որուն վրայ ինծի պյուսալ տուիր ։

50 Իմ նեղութեանս մէջ ջմխիթարութիւնս աս է. վասն զի քու խօսքդ զիս կենդանացուց ։

51 Ամբարտաւանները խիստ շատ ռծաղր ըրին զիս. բայց ես սքու օրէնքէդ չխոտորեցայ ։

52 Ո՛վ Տէր՝ քու առջի դատաստաններդ յիշեցի, ու մխիթարուեցայ ։

53 վՍոսկումը իս բռնեց ան ամբարիշտներուն համար, որ քու օրէնքդ կը թողուն ։

54 Քու կանոններդ ինծի երգեր եղան իմ պանդխտութեանս տանը մէջ ։

55 Ո՛վ Տէր՝ գիշերը տքու անունդ յիշեցի, ու քու օրէնքդ պահեցի ։

56 Աս եղաւ ինծի, ինչու որ քու հրամաններդ կը պահեմ ։

ԽԷԹ

57 րԴուն իմ բաժինս ես՝ ո՛վ Տէր. ըսի որ քու խօսքերդ պահեմ ։

58 Բոլոր սրտով քու երեսդ խնդրեցի. ողորմէ՛ ինծի ցքու խօսքիդ համեմատ ։

59 ւԻմ ճամբաներուս վրայով մտածեցի, և իմ ոտքերս քու վկայութիւններուդ դարձուցի ։

60 Քու պատուիրանքներդ պահելու արտորացի ու չուշացայ ։

61 Ամբարիշտներուն * խումբերը իս պատեցին, բայց ես քու օրէնքդ չմոռցայ ։

62 փԿէս գիշերին կ'ելլեմ քեզի գոհութիւն մատուցանելու քու արդար դատաստաններուդ համար ։

63 Ես ընկեր եղայ ան ամենուն որ քեզմէ կը վախնան, ու քու հրամաններդ կը պահեն ։

64 Ո՛վ Տէր՝ քերկիրը լեցուն է քու ողորմութեամբդ, օսորվեցուր ինծի քու կանոններդ ։

ՏԷԹ

65 Բարութիւն ըրիր քու ծառայիդ՝ ո՛վ Տէր, քու խօսքիդ համեմատ ։

66 Բարի իմաստութիւն ու գիտութիւն սորվեցուր ինծի. ինչու որ քու պատուիրանքներուդ հաւատացի ։

շ Սաղ. ճլը. 1 ։ Մատ. ժ. 18, 19 ։ Գոր. իզ. 1, 2 ։
ո Հմր 16 ։
չ Հմր 15 ։
պ Հմր 74, 81, 147 ։
ջ Հռով. ժե. 4 ։
ռ Երեմ. ի. 7 ։
ս Յոբ. իգ. 11 ։ Սաղ. խդ. 18 ։ Հմր 157 ։
վ Եզր. թ. 3 ։
տ Սաղ. կգ. 6 ։
ր Սաղ. ժզ. 5 ։ Երեմ. ժ. 16 ։ Ողբ. գ. 24 ։
ց Հմր 41 ։
ւ Ղուկ. ժե. 17, 18 ։
* Կամ՝ լարերը
փ Գոր. ժզ. 25 ։
ք Սաղ. լգ. 5 ։
օ Հմր 12, 26 ։

67 աՔանի որ վշտացած չէի, կը սըխալէի. բայց հիմա քու խօսքդ կը պահեմ ։

68 բԲարի ես դուն, ու բարերար. գսորվեցուր ինծի քու կանոններդ ։

69 Ամբարտաւանները դստութիւն հնարեցին ինծի դէմ. բայց ես բոլոր սրտով քու հրամաններդ պահեցի ։

70 եԱնոնց սիրտը ճարպի պէս պարարտացաւ. բայց զես քու օրէնքովդ ուրախացայ ։

71 էԱղէկ եղաւ ինծի որ վշտացայ, որպէս զի քու կանոններդ սորվիմ ։

72 ըԻնծի հազարաւոր ոսկիէ ու արծաթէ աւելի աղէկ է քու բերնիդ օրէնքը ։

ՅՈՏ

73 թԶիս քու ձեռքերդ ըրին ու ըստեղծեցին. ժիմաստուն ըրէ զիս, որ քու պատուիրանքներդ սորվիմ ։

74 իՔեզմէ վախցողները իս պիտի տեսնեն և ուրախանան. լինչու որ քու խօսքիդ յուսացայ ։

75 Գիտեմ ո՛վ Տէր, որ քու դատաստաններդ արդարութիւնով են. ու խիրաւունքով զիս վշտացուցիր ։

76 Հիմա թող քու ողորմութիւնդ ինծի մխիթարութիւն ըլլայ, քու ծառայիդ տուած խօսքիդ համեմատ ։

77 ծԹող քու գթութիւններդ իմ վրաս գան որ ապրիմ. վասն զի կքու օրէնքդ իմ ուրախութիւնս է ։

78 Ամբարտաւանները հպիտի ամչնան. ինչու որ ձառանց պատճառի անիրաւութիւն ըրին ինծի դէմ. բայց ես ղքու հրամաններուդ վրայ պիտի մտածեմ ։

79 Թող ինծի դառնան քեզմէ վախցողները, և քու վկայութիւններդ ճանչցողները ։

80 Թող իմ սիրտս կատարեալ ըլլայ քու կանոններուդ մէջը, անանկ որ չամչնամ ։

ՔԱՓ

81 ճԻմ անձս քու փրկութեանդ † կը կարօտի, մքու խօսքիդ կը յուսամ ։

82 յԻմ աչքերս քու խօսքիդ համար կը նուաղին, ըսելով թէ՝ Ե՞րբ պիտի մխիթարես զիս ։

83 Ինչու որ նես ծուխի մէջ դրուած տիկի պէս եղայ. բայց քու կանոններդ չմոռցայ ։

84 շՈ՞րչափ են քու ծառայիդ օրերը. ոիս հալածողներուն ե՞րբ դատաստան պիտի ընես ։

ա Հմր 71 ։ Երեմ. լա. 18, 19 ։ Եբր. ժբ. 11 ։
բ Սաղ. ճզ. 1 ։ ճէ. 1 ։ Մատ. ժթ. 19 ։
գ Հմր 12, 26 ։
դ Յոբ. ժգ. 4 ։ Սաղ. ճթ. 2 ։
ե Սաղ. ժէ. 10 ։ Ես. զ. 10 ։ Իը. 27 ։
զ Հմր 35 ։
է Հմր 67 ։ Եբր. ժբ. 10, 11 ։
ը Հմր 127 ։ Սաղ. ժթ. 10 ։ Առակ. ը. 10, 11, 19 ։
թ Յոբ. ժ. 8 ։ Սաղ. ճ. 3 ։ ճլը. 8 ։ ճլթ. 14 ։
ժ Հմր 34, 144 ։
ի Սաղ. լդ. 2 ։
լ Հմր 49, 147 ։
խ Եբր. ժբ. 10 ։
ծ Հմր 41 ։
կ Հմր 24, 47, 174 ։
հ Սաղ. իե. 3 ։
ձ Հմր 86 ։
ղ Հմր 23 ։
ճ Սաղ. հդ. 26 ։ ձգ. 2 ։
† Եբր. կը մաշի,
մ Հմր 74, 114 ։
յ Հմր 123 ։ Սաղ. կթ. 3 ։
ն Յոբ. լ. 30 ։
շ Սաղ. լթ. 4 ։
ո Յայտ. զ. 10 ։

85 ժ Ամբարտաւանները փոսեր փորեցին ինծի համար, որ քու օրէնքիդ պէս չեն։

86 Քու բոլոր պատուիրանքներդ ճշմարիտ են. ի զուր տեղը լ զիս կը հալածեն, օգնէ ինծի։

87 Քիչ մնաց որ զիս կորսընցընէին երկրին մէջ. բայց ես քու հրամաններդ չթողուցի։

88 խ Քու ողորմութեանդ համեմատ կենդանացո՛ւր զիս, և քու բերնիդ վկայութիւնը պիտի պահեմ։

ԼԱՄԵՏ

89 Ո՛վ Տէր՝ ծ քու խօսքդ յաւիտեան հաստատ է երկինքի մէջ։

90 Քու հաւատարմութիւնդ ազգէ մինչեւ ազգ կը մնայ. դուն հաստատեցիր երկիրը ու կը կենայ։

91 կ Քու հրամաններուդ պէս կը կենան մինչեւ այս օր. ինչու որ բոլորը քու ծառաներդ են։

92 Թէ որ հ քու օրէնքդ իմ ուրախութիւնս չըլլար, ան ատենը կորսուած պիտի ըլլայի իմ տրտմութեանս մէջ։

93 Յաւիտեան պիտի չմոռնամ քու հրամաններդ, քանզի անոնցմով կենդանացուցիր զիս։

94 Ես քուկդ եմ, փրկէ զիս. ինչու որ քու հրամաններդ փնտռեցի։

95 Ամբարիշտները ինծի սպասեցին, որ իս կորսընցնեն. բայց ես քու վկայութիւններդ միտքս պիտի բերեմ։

96 ձ Ամէն կատարելութեան վերջը տեսայ. քու պատուիրանքդ շատ ընդարձակ է։

ՄԵՄ

97 Որչա՜փ կը սիրեմ քու օրէնքդ. ղ ան է ամէն օր իմ մտածութիւնս։

98 Քու պատուիրանքներովդ զիս ճ իմ թշնամիներէս իմաստուն ըրիր. քանզի անոնք միշտ իմ քովս են։

99 Իմ բոլոր ուսուցիչներէս աւելի հանճարեղ եղայ. մ ինչու որ քու վկայութիւններդ իմ մտածութիւնս են,

100 յ Ծերերէն աւելի իմաստուն եղայ, վասն զի քու հրամաններդ պահեցի։

101 ն Ամէն գէշ ճամբայէն իմ ոտքերս ետ քաշեցի, որ քու խօսքդ պահեմ։

102 Քու դատաստաններէդ չխոտորեցայ. ինչու որ դուն սորվեցուցիր ինծի։

103 շ Որչա՜փ քաղցր է քու խօսքդ իմ քմացս. մեղրէն աւելի անոյշ է իմ բերնիս։

104 Քու հրամաններովդ իմաստուն եղայ. անոր համար ո ստութեան ամէն ճամբան ատեցի։

ՆՈՒՆ

105 չ Քու խօսքդ իմ ոտքերուս ճրագ է, ու իմ շաւիղներուս լոյս։

106 պ Երդում ըրի, ու պիտի կատարեմ, որ քու արդար դատաստաններդ պահեմ։

107 Շատ նեղացայ, ո՛վ Տէր՝ ջ կենդանացուր զիս քու խօսքիդ համեմատ։

108 Հիմա ռ իմ բերնիս կամաւոր զոհերը ընդունէ՝ ո՛վ Տէր, ու ս քու դատաստաններդ սորվեցո՛ւր ինծի։

109 վ Իմ հոգիս ամէն ժամանակ ափիս մէջն է. բայց քու օրէնքդ չեմ մոռնար։

110 տ Ամբարիշտները որոգայթ լարեցին ինծի համար. բայց ես ր քու հրամաններէդ չմոլորեցայ։

111 ց Քու վկայութիւններդ յաւիտեան ինծի ժառանգութիւն առի. ինչու որ ւ անոնք իմ սրտիս ցնծութիւնն են։

112 Խոնարհեցուցի իմ սիրտս, որ քու կանոններդ կատարեմ յաւիտեան փ մինչեւ վերջը։

ՍԱՄԵԽ

113 Երկմիտ մարդիկները ատեցի, բայց քու օրէնքդ սիրեցի։

114 ք Իմ ապաւէնս ու ասպարս դուն ես, օ քու խօսքիդ յուսացայ։

115 ա Ե՛տ քաշուեցէք ինծմէ՝ ո՛վ չարագործներ, ինչու որ ես իմ Աստուծոյս պատուիրանքները պիտի պահեմ։

116 Պահպանէ զիս քու խօսքիդ համեմատ, որ ապրիմ, և զիս բ իմ յոյսէս մի՛ ամչցըներ։

117 Զօրացո՛ւր զիս որ ապրիմ, ու միշտ քու կանոններուդ ուշադրութիւն ընեմ։

118 Անարգեցիր ան ամէնը՝ որ գ քու կանոններէդ խոտորեցան. քանզի անոնց նենգութիւնը սուտ է։

119 Դուն [illegible] *կղկղանք կը համարիս" երկրի բոլոր ամբարիշտները. անոր համար ես քու վկայութիւններդ կը սիրեմ։

120 ե Իմ մարմինս քու ահէդ դողաց, ու ես քու դատաստաններէդ վախցայ։

ԱՅԻՆ

121 Իրաւունք ու արդարութիւն ըրի. զիս իմ նեղիչներուս մի՛ մատներ։

122 զ Քու ծառայիդ՝ բարութեան համար երաշխաւոր եղիր, որ ամ–

ժ Սաղ. լե. 7 : Առակ. ժզ. 27 :
ի Սաղ. լե. 19 : լը. 19 :
լ Հմր 78 :
խ Հմր 40 :
ծ Սաղ. ձթ. 2 : Մատ. իդ. 34, 35 : Ա Պետ. ա. 25 :
կ Երեմ. լգ. 25 :
հ Հմր 24 :
ձ Մատ. ե. 18 : իդ. 35 :
ղ Սաղ. ա. 2 :
ճ Բ Օր. դ. 6, 8 :
մ Բ Տիմ. գ. 15 :
յ Յոբ. լբ. 7, 8, 9 :
ն Առակ. ա. 15 :
շ Սաղ. ժթ. 10 : Առակ. ը. 11 :
ո Հմր 128 :
չ Առակ. զ. 23 :
պ Նեեմ. ժ. 29 :
ջ Հմր 88 :
ռ Ովս. ժդ. 2 : Եբր. ժգ. 15 :
ս Հմր 12, 26 :
վ Յոբ. ժգ. 14 :
տ Սաղ. ճխ. 5 : ճխա. 9 :
ր Հմր 10, 21 :
ց Բ Օր. լգ. 4 :
ւ Հմր 77, 92, 174 :
ք Սաղ. լբ. 7 : ղա. 1 :
օ Հմր 81 :
ա Սաղ. զ. 8 : ճլթ. 19 : Մատ. է. 23 :
բ Սաղ. իե. 2 : Հռով. ե. 5 : Թ. 33 : Ժ. 11 :
գ Հմր 21 :
դ Եզեկ. իբ. 18 :
* Կամ՝ կղկղանքի պէս մերժեցիր
ե Ամբ. գ. 16 :
զ Եբր. է. 22 :

բարտաւանները չհարստահարեն զիս ։

123 [ա] Իմ աչքերս նուաղեցան քու փրկութեանդ համար, ու քու արդարութեանդ խօսքին համար ։
*ա Հմր 81, 82։*

124 Ըրէ՛ քու ծառայիդ քու ողորմութեանդ համեմատ, և [բ] քու կանոններդ սորվեցո՛ւր ինծի ։
*բ Հմր 12։*

125 [գ] Ես քու ծառադ եմ, իմաստութիւն ըրէ զիս, որ քու վկայութիւններդ ճանչնամ ։
*գ Սաղ. ճժզ. 16։*

126 Տէրոջը բան տեսնելու ժամանակն է. ինչու որ քու օրէնքդ խափանեցին ։

127 [դ] Անոր համար քու պատուիրանքներդ ոսկիէն՝ ու ազնիւ ոսկիէն աւելի սիրեցի ։
*դ Հմր 72; Սաղ. ժթ. 10; Առակ. ը. 11։*

128 Ուստի ամէն բանի վրայով [illegible] բոլոր հրամաններդ ուղիղ կը համարիմ, ու [ե] ստութեան ամէն ճամբան կ'ատեմ ։
*ե Հմր 104։*

ՓԷ

129 Քու վկայութիւններդ զարմանալի են. անոր համար իմ անձս անոնք կը պահէ ։

130 Քու խօսքերուդ յայտնուիլը լոյս կու տայ, ու [զ] միամիտները իմաստուն կ'ընէ ։
*զ Սաղ. ժթ. 7; Առակ. ա. 4։*

131 Իմ բերանս բացի ու հևացի. վասն զի [է] քու պատուիրանքներուդ ցանկացայ ։
*է Հմր 20։*

132 [ը] Ինծի նայէ ու ողորմէ՛ ինծի, ինչպէս որ [թ] սովորաբար կ'ընես քու անունդ սիրողներուն ։
*ը Սաղ. ճզ. 4; թ բ Թես. ա. 6, 7։*

133 [ժ] Իմ գնացքներս հաստատէ՛ քու խօսքիդ մէջը, ու [ի] բնաւ անօրէնութիւն մը չտիրէ ինծի ։
*ժ Սաղ. ժէ. 5; ի Սաղ. ժթ. 13; Հռով. զ. 12։*

134 [լ] Փրկէ՛ զիս մարդոց բռնութենէն, և քու հրամաններդ պիտի պահեմ ։
*լ Ղու. ա. 74։*

135 [խ] Երեսդ փայլեցո՛ւր քու ծառայիդ վրայ, ու [ծ] սորվեցո՛ւր ինծի քու կանոններդ ։
*խ Սաղ. դ. 6; ծ Հմր 12, 26։*

136 [կ] Ջուրերու առուներ կ'իջնեն իմ աչքերէս. ինչու որ մարդիկ քու օրէնքդ չպահեցին ։
*կ Երեմ. թ. 1; ժդ. 17; Տես Եզեկ. թ. 4։*

ՑԱՏԷ

137 [հ] Արդար ես դուն՝ ո՛վ Տէր, և քու դատաստաններդ ուղիղ են ։
*հ Եզր. թ. 15; Նեեմ. թ. 33; Երեմ. ժբ. 1; Դան. թ. 7։*

138 [ձ] Քու պատուիրած վկայութիւններդ արդար ու խիստ ճշմարիտ են ։
*ձ Սաղ. ժթ. 7, 8, 9։*

139 [ղ] Իմ նախանձս զիս մաշեց. ինչու որ իմ թշնամիներս քու խօսքերդ մոռցան ։
*ղ Սաղ. կթ. 9; Յով. բ. 17։*

140 [ճ] Քու խօսքդ խիստ մաքուր է. անոր համար քու ծառադ անիկայ կը սիրէ ։
*ճ Սաղ. ժբ. 6; ժը. 30; ժթ. 8; Առակ. լ. 5։*

141 Ես ցած ու անարգուած եմ, բայց քու հրամաններդ չմոռցայ ։

142 Քու արդարութիւնդ յաւիտենական արդարութիւն է, ու քու օրէնքդ [մ] ճշմարտութիւն է ։
*մ Հմր 151; Սաղ. ժթ. 9; Յով. ժէ. 17։*

143 Նեղութիւնը ու ցաւը զիս գտան. բայց քու պատուիրանքներդ [յ] իմ ուրախութիւնս են ։
*յ Հմր 77։*

144 Քու վկայութիւններուդ արդարութիւնը յաւիտենական է. [ն] իմաստութիւն ըրէ զիս, ու պիտի ապրիմ ։
*ն Հմր 34, 73, 169։*

ԳՕՓ

145 Բոլոր սրտով աղաղակեցի. ո՛վ Տէր՝ պատասխան տուր ինծի, ու քու կանոններդ պիտի պահեմ ։

146 Քեզի աղաղակեցի, փրկէ՛ զիս, և քու վկայութիւններդ պիտի պահեմ ։

147 [շ] Կանուխ ելայ արշալոյսին, ու աղաղակեցի. [ո] քու խօսքիդ յուսացայ ։
*շ Սաղ. ե. 3; ձը. 13; ճլ. 6; ո Հմր 74։*

148 [չ] Գիշերուան պահերէն առաջ բացուեցան իմ աչքերս քու խօսքերուդ վրայ մտածելու համար ։
*չ Սաղ. կգ. 1, 6։*

149 Իմ ձայնս լսէ՛ քու ողորմութեանդ համեմատ. [պ] ով Տէր՝ քու դատաստաններուդ համեմատ կենդանացո՛ւր զիս ։
*պ Հմր 40, 154։*

150 Անօրէնութեան հետևողները մօտեցան. անոնք քու օրէնքէդ հեռացան ։

151 Ո՛վ Տէր՝ դուն [ջ] մօտ ես, [ռ] ու քու բոլոր պատուիրանքներդ ճշմարտութիւն են ։
*ջ Սաղ. ճխե. 18; ռ Հմր 142։*

152 Առաջուց իմացած եմ քու վկայութիւններէդ, որ անոնք [ս] յաւիտեան հաստատեցիր ։
*ս Ղու. իա. 33։*

ՐԷՇ

153 [վ] Տե՛ս իմ խղճութիւնս, ու զիս փրկէ՛. ինչու որ քու օրէնքդ չմոռցայ ։
*վ Ողբ. ե. 1։*

154 [տ] Իմ իրաւունքս պաշտպանէ՛ ու փրկէ՛ զիս. քու խօսքիդ համեմատ [ր] կենդանացո՛ւր զիս ։
*տ ա Թագ. իդ. 16; Սաղ. լե. 1; Միք. է. 9; ր Հմր 40։*

155 [ց] Փրկութիւնը հեռու է ամբարիշտներէն. վասն զի քու կանոններդ չխնդրեցին ։
*ց Յոբ. ե. 4։*

156 Ո՛վ Տէր՝ քու գթութիւններդ շատ են. քու դատաստաններուդ համեմատ [ւ] կենդանացո՛ւր զիս ։
*ւ Հմր 149։*

157 Շատ են իմ հալածիչներս ու թշնամիներս. բայց ես քու վկայութիւններէդ [փ] չխոտորեցայ ։
*փ Սաղ. խդ. 18; Հմր 51։*

158 Անօրէնները տեսայ ու [ք] զզուեցայ. ինչու որ անոնք քու խօսքդ չէին պահեր ։
*ք Հմր 136; Եզեկ. թ. 4։*

159 Նայէ՛ որ քու հրամաններդ կը սիրեմ. ո՛վ Տէր՝ քու ողորմութեանդ համեմատ [օ] կենդանացո՛ւր զիս ։
*օ Հմր 88։*

160 Քու խօսքիդ *սկիզբը ճշմարտութիւն է, ու քու բոլոր արդար դատաստաններդ յաւիտենական են ։
** Կամ՝ բովանդակութիւնը*

ՇԻՆ

161 Իշխանները զուր տեղը իս հալածեցին. բայց իմ սիրտս քու խօսքէդ վախցաւ։

162 Ես կը ցնծամ քու խօսքերովդ շատ աւար գտնողի պէս։

163 Ստութիւնը ատեցի ու անարգեցի. բայց քու օրէնքդ սիրեցի։

164 Օրը եօթը անգամ կ'օրհնեմ քեզ, քու արդար դատաստաններուդ համար։

165 ա Քու օրէնքդ սիրողներուն շատ խաղաղութիւն կայ. ու անոնց գայթակղութիւն չըլլար։

166 բ Ո՛վ Տէր՝ քու փրկութեանդ սպասեցի, և քու պատուիրանքներդ կատարեցի։

167 Իմ անձս քու վկայութիւններդ պահեց, ու ես անոնք շատ կը սիրեմ։

168 Քու հրամաններդ և քու վկայութիւններդ պահեցի. գ ինչու որ իմ բոլոր ճամբաներս քու առջիդ են։

ԹԱՎ

169 Ո՛վ Տէր՝ թող իմ աղաղակս քու առջիդ մօտենայ. քու խօսքիդ համեմատ դ իմաստութիւն ըրէ զիս։

170 Թող իմ աղաչանքս քու առջե՛դ ելլէ. քու խօսքիդ համեմատ փրկէ՛ զիս։

171 Իմ շրթունքներս օրհնութիւն պիտի բղխեն. վասն զի քու կանոններդ սորվեցուցիր ինծի։

172 Իմ լեզուս քու խօսքդ պիտի պատմէ. ինչու որ քու բոլոր պատուիրանքներդ արդար են։

173 Թող քու ձեռքդ ինծի օգնական ըլլայ. ինչու որ ե քու հրամաններդ ընտրեցի։

174 զ Ո՛վ Տէր՝ քու փրկութեանդ ցանկացայ, ու է քու օրէնքդ իմ ուրախութիւնս է։

175 Թող իմ անձս ապրի ու քեզ օրհնէ՛, և քու դատաստաններդ օգնեն ինծի։

176 ը Կորսուած ոչխարի պէս մոլորեցայ. փնտռէ՛ քու ծառադ, ինչու որ քու պատուիրանքներդ չըմոռցայ։

Հ ա Թագ. իգ. 12. 15. իդ. 18. Հմր 23։
ա Եփ. լբ. 17։
բ Ծն. խթ. 18. Հմր 174։
գ Առակ. ե. 21։
դ Հմր 144։
ե Յես. իդ. 22. Առակ. ա. 29. Ղուկ. ժ. 42։
զ Հմր 166։
է Հմր 16. 24. 47. 77. 111։
ը Ես. ծգ. 6. Ղուկ. ժե. 4. Ա Պետ. բ. 25։

ՍԱՂՄ. ՃԻ

1 Դաւիթ աղօթք կ'ընէ նենգութեան դէմ. 5 ինքը չարերուն հետ խօսակցութիւն ընելու ստիպուելուն համար գանգատ կ'ընէ։

Աստիճաններուն երգը։

1 Իմ ա նեղութեանս մէջ Տէրոջը աղաղակեցի, ու անիկայ ինծի պատասխան տուաւ։

2 Ո՛վ Տէր՝ փրկէ՛ իմ անձս սուտ շրթունքներէն, ու նենգաւոր լեզուէն։

3 բ Նենգաւոր լեզուն քեզի ի՞նչ կուտայ, և քեզի ի՞նչ կ'աւելցընէ՞։

4 Զօրաւոր մարդուն սուր նետերը, ու գիհիին կայծերը։

5 Վա՜յ ինծի՝ որ գ Մոսոքի մէջ պանդուխտ եղայ, և դ Կեդարի վրաններուն քովերը բնակեցայ։

6 Շատ ժամանակ իմ անձս բնակեցաւ խաղաղութիւնը ատողներուն հետ։

7 Ես խաղաղասէր էի. բայց երբոր կը խօսէի, անոնք կռիւ կ'ընէին։

ա Սաղ. ճժը. 5. Յովն. բ. 2։
բ Կամ՝ Ո՛վ նենգաւոր լեզու՝ ի՞նչ տրուի քեզի, ու ի՞նչ աւելցուի։
գ Ծն. ժ. 2. Եզեկ. իէ. 13։
դ Ծն. իե. 13. Ա Թագ. իե. 1. Երեմ. խթ. 28. 29։

ՍԱՂՄ. ՃԻԱ

1—8 Բարեպաշտ մարդոց ապահովութիւնը՝ որոնք Աստուծոյ պաշտպանութեանը վրայ կը դնեն իրենց յոյսը։

Աստիճաններուն երգը։

1 Աչքերս դէպ 'ի լեռները պիտի վերցընեմ, ուսկից որ իմ օգնութիւնս պիտի գայ։

2 ա Իմ օգնութիւնս Տէրոջմէն է, ան որ երկինքը ու երկիրը ստեղծեց։

3 բ Անիկայ քու ոտքդ չդողացընէ, ու գ քու Պահապանդ չքնանայ։

4 Ահա Իսրայէլի Պահապանը պիտի չմրափէ ու պիտի չքնանայ։

5 Տէրը քու պահապանդ է. Տէրը դ քու աջ ձեռքիդ քովը ե քու հովանիդ է։

6 զ Ցորեկը արեգակը քեզ պիտի չզարնէ, ո՛չ ալ գիշերը լուսինը։

7 Տէրը քեզ ամէն չարէն պիտի պահպանէ. է քու անձդ պիտի պահպանէ։

8 Տէրը ը քու ելլելդ ու մտնելդ պիտի պահպանէ, ասկէ ետև մինչև յաւիտեան։

ա Սաղ. ճիդ. 8։
բ Ա Թագ. բ. 9. Առակ. գ. 23. 26։
գ Սաղ. ճիէ. 1. Ես. իէ. 3։
դ Սաղ. ժզ. 8. ճլ. 31։
ե Ես. իե. 4։
զ Սաղ. ղա. 5. Ես. խթ. 10. Յայտ. է. 16։
է Սաղ. խա. 2. ղէ. 10. ճխե. 20։
ը Բ Օր. իը. 6. Առակ. բ. 8. գ. 6։

ՍԱՂՄ. ՃԻԲ

1 Դաւիթ եկեղեցիին համար իր ունեցած ուրախութիւնը կը յայտնէ. 6 անոր խաղաղութեանը համար կ'աղօթէ։

Դաւիթի աստիճաններուն երգը։

1 Կ'ուրախանայի երբոր ինծի կ'ըսէին. ա Տէրոջը տունը երթանք։

2 Մեր ոտքերը քու դռներուդ մէջը կայնեցան, ո՛վ Երուսաղէմ։

3 Երուսաղէմը անանկ քաղաքի մը պէս շինուած է, որ բ իրենիրեն միաւորուած է.

4 գ Ուր ցեղերը՝ Տէրոջը ցեղերը հոն կ'ելլեն՝ դ Իսրայէլին պատուիրածին պէս. Տէրոջը անուանը գոհութիւն մատուցանելու համար։

5 ե Ինչու որ հոն դրուած են դատաստանի աթոռները, Դաւիթին տանը աթոռները։

6 զ Երուսաղէմի խաղաղութիւնը խնդրեցէք. թող յաջողին անոնք որ քեզ կը սիրեն։

7 Խաղաղութիւն թող ըլլայ քու

ա Ես. բ. 3. Զաք. ը. 21։
բ Տես Բ Թագ. ե. 9։
գ Ել. իգ. 17. Բ Օր. ժզ. 16։
դ Ել. ժզ. 34։
ե Բ Օր. ժէ. 8. Բ Մն. ժթ. 8։
զ Սաղ. ծա. 18։

պարիսպներուդ մէջը, ու յաջողութիւն՝ քու պալատներուդ մէջը ։
8 Իմ եղբայրներուս ու ընկերներուս համար հիմա պիտի ըսեմ. խաղաղութիւն ըլլայ քեզի ։
9 Մեր Տէր Աստուծոյն տանը համար՝ ե քեզի բարութիւն պիտի ուզեմ ։

ե Նեեմ. բ. 10 ։

## ՍԱՂՄ. ՃԻԳ

1 Բարեպաշտները իրենց վստահութիւնը Աստուծոյ վրայ կը դնեն. 3 ու կ՚աղօթեն որ մարդոց նախատինքներէն ազատ մնան ։

Աստիճաններուն երգը ։

1 Քեզի ա կը բարձրացընեմ իմ աչքերս, բ ով երկինքի մէջ բնակող։
2 Ահա ինչպէս որ ծառաներուն աչքերը իրենց տիրոջը ձեռքին կը նային, ու ինչպէս որ աղախինին աչքերը իր տիկնոջը ձեռքին, անանկ ալ մեր աչքերը Տէրոջը մեր Աստուծոյն պիտի նային, մինչև որ մեզի ողորմի ։
3 Ողորմէ՛ մեզի ով Տէր, ողորմէ՛ մեզի, ինչու որ խիստ լեցուեցանք անարգանքով ։
4 Խիստ լեցուած է մեր անձը գոռոզներուն նախատինքովը, ու ամբարտաւաններուն անարգանքովը ։

ա Սաղ. ճիա. 1 ։ ճխա. 8 ։
բ Սաղ. բ. 4 ։ ժա. 4 ։ ճժե. 3 ։

## ՍԱՂՄ. ՃԻԴ

1—8 Եկեղեցին զԱստուած կ՚օրհնէ հրաշալի ազատութեան մը համար ։

Դաւիթի աստիճաններուն երգը ։

1 Թէ որ Տէրը մեր հետը չըլլար. ա հիմա Իսրայէլը թող ըսէ,
2 Թէ որ Տէրը մեր հետը չըլլար, երբոր մարդիկ մեր վրայ ելան.
3 Ան ատենը բ ողջ ողջ պիտի կլլէին մեզ, երբոր անոնց բարկութիւնը մեր վրայ բորբոքած էր.
4 Ան ատենը ջուրերը մեզ պիտի ընկղմէին, հեղեղը մեր անձերուն վրայէն պիտի անցնէր.
5 Ան ատենը հպարտացած ջուրերը մեր անձերուն վրայէն պիտի անցնէին ։
6 Օրհնեա՛լ ըլլայ Տէրը. որ մեզ անոնց ակռաներուն որս չտուաւ ։
7 Մեր անձերը գ ձնճղուկի պէս որսորդներուն որոգայթէն ազատեցան. որոգայթը կոտրտեցաւ, ու մենք ազատեցանք ։
8 դ Մեր օգնութիւնը Տէրոջը անունովն է, ե ան որ երկինքը ու երկիրը ստեղծեց ։

ա Սաղ. ճիթ. 1 ։
բ Սաղ. ծզ. 1. 2 ։ ծե. 3 ։ Առակ. ա. 12 ։
գ Սաղ. ղա. 3 ։ Առակ. զ. 5 ։
դ Սաղ. ճիա. 2 ։
ե Ծն. ա. 1 ։ Սաղ. ճլդ. 3 ։

## ՍԱՂՄ. ՃԻԵ

1 Իրենց յոյսը Աստուծոյ վրայ դնողներուն ապահովութիւնը ։ 4 Բարեպաշտ մարդոց համար՝ ու չարերուն դէմ աղօթք ։

Աստիճաններուն երգը ։

1 Տէրոջը յուսացողները Սիօն լեռանը պէս են, որ չսասանիր. հապա յաւիտեան կը մնայ ։
2 Ինչպէս որ Երուսաղէմը լեռներով պատած է, անանկ ալ Տէրը իր ժողովուրդին չորս կողմն է, ասկէ ետև մինչև յաւիտեան ։
3 Ինչու որ ա ամբարշտին գաւազանը արդարներուն վիճակին վրայ պիտի չմնայ, որ արդարները ձեռքերնին անօրէնութեան չերկընցընեն ։
4 Ո՛վ Տէր՝ բարիք ըրէ բարիներուն, ու սրտով ուղիղներուն ։
5 Սակայն անոնք որ իրենց բ ծուռ ճամբաներուն մէջը կը մոլորին, Տէրը պիտի * կորսընցընէ անօրէնութիւն գործողներուն հետ ։ գ Խաղաղութիւն ըլլայ Իսրայէլին վրայ ։

ա Առակ. ժբ. 3 ։ Ես. ժդ. 5 ։
բ Առակ. բ. 15 ։
* Եբր. տանի
գ Սաղ. ճիը. 6 ։ Գաղ. զ. 16 ։

## ՍԱՂՄ. ՃԻԶ

1 Եկեղեցին իր անակնկալելի դերեդարձութիւնը հրատարակելով՝ 4 աղօթք կ՚ընէ, ու անոր բարի յաջողութեանը վրայ կը մարգարէանայ ։

Աստիճաններուն երգը ։

1 Երբոր Տէրը Սիօնին գերութիւնը դարձուց, ա †երազ տեսնողներու" պէս եղանք ։
2 Ան ժամանակը բ մեր բերանը խնդութիւնով լեցուեցաւ, ու մեր լեզուն ցնծութիւնով. ան ժամանակը հեթանոսաց մէջ ըսին թէ Տէրը ասոնց համար մեծ բաներ ըրաւ ։
3 Տէրը մեզի համար մեծ բաներ ըրաւ, ու մենք ուրախացանք ։
4 Ո՛վ Տէր՝ դարձո՛ւր մեր գերութիւնը հարաւին առուներուն պէս ։
5 գ Անոնք որ արցունքով կը ցանեն, ցնծութիւնով պիտի հնձեն ։
6 Ան որ լալով կ՚երթայ ցանելու սերմը տանելով, անշուշտ ցնծութեամբ ետ պիտի դառնայ իր որայենը խուրձերը բերելով ։

ա Գործ. ժբ. 9 ։
† Կամ՝ առողջացողներու
բ Յոբ. ը. 21 ։
գ Տես Երեմ. լա. 9, ճա ։

## ՍԱՂՄ. ՃԻԷ

1 Աստուծոյ օրհնութեանը զօրութիւնը ։ 3 Բարի տղաքը անոր պարգևն են ։

Սողոմոնի աստիճաններուն երգը ։

1 Թէ որ Տէրը չշինէ տունը, զուր տեղը կ՚աշխատին անոր շինողները. ա թէ որ Տէրը չպահպանէ քաղաքը, զուր տեղը կը հսկեն պահապանները ։
2 Պարապ բան է ձեզի համար կանուխ ելլելը, և ուշ հանգչիլը, ու բ ցաւով հաց ուտելը. յիրաւի ան իր սիրելիին քուն կու տայ ։
3 Ահա գ տղաքը Տէրոջը ժառանգութիւնն են. դ որովայնի պտուղը անոր ‡ պարգևն է ։
4 Ինչպէս են նետերը զօրաւորին

ա Սաղ. ճիա. 3. 4. 5 ։
բ Ծն. գ. 17. 19 ։
գ Ծն. լգ. 5 ։ խը. 4 ։ Յեսու. իդ. 3. 4 ։
դ Օր. իը. 4 ։
‡ Կամ՝ վարձքն

ձեռքին մէջը, այնպէս են երիտասարդներուն տղաքը ։

5 Երանի՜ այն մարդուն՝ որ իր կապարճը անոնցմով լեցուց. երբոր դրանը մէջ թշնամեաց հետ խօսելու ըլլան, ᵉպիտի չամչնան ։

ᵉ Տն՝ Ցոբ. ե. 4։ Առակ. իէ. 11։

## ՍԱՂՄ. ՃԻԲ

1-6 Զանազան օրհնութիւններ՝ որոնք աստուածավախներուն կը տրուին ։

Աստիճաններուն երգը ։

1 ᵃԵրանի՜ այն ամենուն՝ որ Տէրոջմէն կը վախնան, ––անոր ճամբաներուն մէջը կը քալեն ։
2 ᵇՎաստակ զի քու ձեռքիդ աշխատութիւնը պիտի ուտես. երանի՜ է քեզի, ու քեզի բարի պիտի ըլլայ ։
3 Քու կնիկդ ᶜպտղաբեր որթի մը պէս պիտի ըլլայ քու տանդ ներսի դիերը, ––քու որդիներդ ᵈձիթենիի տունկերու պէս՝ քու սեղանիդ չորս կողմը ։
4 Ահա՛ Տէրոջմէն վախցող մարդը ասանկ պիտի օրհնուի ։
5 ᵉՏէրը քեզ Սիօնէն օրհնէ, ու Երուսաղէմին բարութիւնը տեսնես քու կենացդ բոլոր օրերուն մէջը ։
6 Եւ ᶠքու որդւոցդ որդիները տեսնես ։ ᵍԽաղաղութիւն ըլլայ Իսրայէլին վրայ ։

ᵃ Սաղ. ճժբ. 1։ ճժե. 13։ ճժթ. 1։
ᵇ Ես. գ. 10։
ᶜ Եզեկ. ժթ. 10։
ᵈ Սաղ. ծբ. 8։ ճխգ. 12։
ᵉ Սաղ. ճլդ. 3։
ᶠ Ծն. ծ. 23։ Յոբ. խբ. 16։
ᵍ Սաղ. ճիե. 5։

## ՍԱՂՄ. ՃԻԹ

1 Աստուած գովելու յորդորանք մը՝ Իսրայէլը իր մեծ նեղութիւններէն փրկելուն համար ։ 5 Եկեղեցին ատողներուն վրայ գալու չարիքները ։

Աստիճաններուն երգը ։

1 ᵃՇատ անգամ ––Իսրայէլը թող ըսէ. ᵇիմ մանկութենէս 'ի վեր շատ անգամ զիս նեղեցին ։
2 Իմ մանկութենէս 'ի վեր շատ անգամ զիս նեղեցին, բայց ինծի չյաղթեցին ։
3 Հերկողները իմ կռնակիս վրայ հերկեցին, ––իրենց ակօսները երկընցուցին ։
4 Տէրը արդար է. անիկայ ամբարիշտներուն չուանները կտրտեց ։
5 Սիօնը ատողներուն ամէնը պիտի ամչնան ու ետ դառնան ։
6 Տանիքի վրայի ᶜխոտին պէս պիտի ըլլան, որ դեռ չփրցուած կը չորնայ ։
7 Որ հնձողը չկրնար անով իր ձեռքը լեցընել, ոչ ալ խուրձ կապողը իր գոգը ։
8 Եւ անցնողները չեն ըսեր թէ՝ ᵈՏէրոջը օրհնութիւնը ձեր վրայ ըլլայ. ––ձեզ Տէրոջը անունովը կ'օրհնենք ։

ᵃ Սաղ. ճիգ. 1։
ᵇ Տն՝ Եզեկ. իգ. 3։ Ովս. բ. 15։ ժա. 1։
ᶜ Սաղ. լէ. 2։
ᵈ Հռութ. բ. 4։ Սաղ. ճժը. 26։

## ՍԱՂՄ. ՃԼ

1 Սաղմոսերգուն աղօթքի մէջ իր ունեցած յոյսը, 5 և իր յուսոյն յարատեւութիւնը կը ցուցընէ. 7 կը յորդորէ Իսրայէլացիները որ իրենց յոյսը Աստուծոյ վրայ դնեն ։

Աստիճաններուն երգը ։

1 ᵃԽորունկ տեղերէն քեզի կանչեցի՝ ո՛վ Տէր ։
2 Ո՛վ Տէր՝ իմ ձայնս լսէ՛. քու ականջներդ թող մտիկ ընեն իմ աղօթքիս ձայնը ։
3 Ո՛վ Տէր՝ ᵇթէ որ անօրէնութիւնները յիշելու ըլլաս, Տէ՛ր ո՛վ կրնայ կենալ ։
4 Բայց ᶜքու քովդ է թողութիւնը, որ ᵈքեզմէ վախնան ։
5 ᵉԵս Տէրոջը կը սպասեմ, իմ անձս կը սպասէ, ու ᶠանոր խօսքին կը յուսամ ։
6 ᵍԱռտուան սպասողներէն՝ առտուան սպասողներէն աւելի իմ անձս Տէրոջը կը սպասէ ։
7 ʰԻսրայէլը թող Տէրո՛ջը յուսայ, ինչու որ ⁱՏէրոջը քովը ողորմութիւն կայ. ու անոր քովը շատ փրկութիւն կայ ։
8 Եւ ʲանիկայ պիտի փրկէ Իսրայէլը իր բոլոր անօրէնութիւններէն ։

ᵃ Ողբ. գ. 55։ Յովն. բ. 2։
ᵇ Սաղ. ճխգ. 2։ Հռովմ. գ. 20, 23, 24։
ᶜ Եւ. լդ. 7։
ᵈ Գթագ. ը. 40։ Սաղ. բ. 11։ Երեմ. լգ. 8, 9։
ᵉ Սաղ. իէ. 14։ լգ. 20։ խ. 1։ Ես. ը. 17։ իզ. 8։ լ. 18։
ᶠ Սաղ. ճժթ. 81։
ᵍ Սաղ. կգ. 6։ ճժթ. 147։
ʰ Սաղ. ճլա. 3։
ⁱ Սաղ. ձզ. 5, 15։ Ես. ծե. 7։
ʲ Սաղ. ճդ. 3, 4։ Մատ. ա. 21։

## ՍԱՂՄ. ՃԼԱ

1 Դաւիթ իր խոնարհութիւնը ցուցընելով՝ 3 կը յորդորէ Իսրայէլը որ Աստուծոյ յուսայ ։

Դաւիթի աստիճաններուն երգը ։

1 Ո՛վ Տէր՝ իմ սիրտս չգոռոզացաւ, և իմ աչքերս չբարձրացան. ––ու ես մեծամեծ բաներու մէջ՝ և ᵃինծմէ բարձր բաներու մէջ չքալեցի ։
2 Յիրաւի իմ անձս հանդարտեցուցի ու հանգստացուցի ᵇիր մօրը կաթէն կտրուած տղու մը պէս. իմ անձս կաթէն կտրուած տղու մը պէս է ։
3 ᶜԻսրայէլը թող Տէրոջը յուսայ ասկէ ետեւ մինչեւ յաւիտեան ։

ᵃ Հռովմ. ժբ. 16։
ᵇ Մատ. ժը. 3։ ա Կոր. ժդ. 20։
ᶜ Սաղ. ճլ. 7։

## ՍԱՂՄ. ՃԼԲ

1 Դաւիթ իր աղօթքին մէջ՝ տապանակին համար իր ունեցած հոգը կը յիշէ Աստուծոյ առջեւ ։ 8 Իր աղօթքը տապանակը վերցուցած ատենը ։ 11 Աստուծոյ խոստումնքներուն յիշատակութիւնը ։

Աստիճաններուն երգը ։

1 Դաւիթին համար յիշէ՛ ո՛վ Տէր, անոր բոլոր նեղութիւնը.
2 Որ այն երդումը ըրաւ Տէրոջը, ––և ուխտ դրաւ ᵃՅակոբին Զօրաւորին,
3 Ըսելով՝ թէ՝ իմ տանս բնակարանը չմտնեմ, ու իմ փռած անկողինիս վրայ չելլեմ,
4 Թէ ᶜիմ աչքերուս քուն՝ և ար–

ᵃ Սաղ. կե. 1։
ᵇ Ծն. խթ. 24։
ᶜ Առակ. զ. 4։

տեւանունքներուս նիրհում չը-
տամ ,
5 Մինչեւ որ ͭ Տէրոջը համար տեղ
մը գտնեմ , ու Յակոբին Զօրաւո-
րին համար բնակարան ։
6 Ահա անոր վրայով լսեցինք ͧ Եփ-
րաթայի մէջ , եւ Ղզանիկայ գտանք
ͭ անտառի դաշտերուն մէջը ։
7 Մտնենք անոր բնակարանները ,
ու Երկրպագութիւն ընենք անոր
պատուանդանին քովը ։
8 ͩ Ելի՛ր հանգստութեանդ տեղը ե-
լի՛ր՝ ո՛վ Տէր , դուն՝ ու ͩ քու զօրու-
թեանդ տապանակը ։
9 Քահանաներդ ͥ թող արդարու-
թիւն հագնին , եւ քու սուրբերդ
ցնծան ։
10 Քու Դաւիթ ծառայիդ համար
անդին մի՛ դարձըներ քու օծեալիդ
երեսը ։
11 Լ Տէրը երդում ըրաւ Դաւիթին
ճշմարտութեամբ , ու ետ չդառնար
անկէ թէ , ͩ Քու որովայնիդ պը-
տուղէն քու աթոռիդ վրայ պիտի
նստեցընեմ ։
12 Թէ որ քու որդիներդ պահեն իմ
ուխտս ու վկայութիւններս որ ա-
նոնց պիտի սորվեցընեմ , ան ատենը
անոնց որդիներն ալ քու աթո-
ռիդ վրայ պիտի նստին յաւիտեան ։
13 ͩ Ինչու որ Տէրը Սիօնը ընտրեց ,
եւ զանիկայ իրեն բնակութեան հա-
մար ուզեց ։
14 Ըսելով . Աս է յաւիտեան իմ
հանգիստս . ասոր մէջը պիտի բնա-
կիմ , ինչու որ ասիկայ ուզեցի ։
15 Անոր պաշարը առատաբար պի-
տի օրհնեմ , ու անոր աղքատները
հացով պիտի կշտացընեմ ։
16 Եւ անոր քահանաներուն փըր-
կութիւն պիտի հագցընեմ . Ու
անոր սուրբերը ուրախութեամբ
պիտի ցնծան ։
17 Ան տեղը Դաւիթին եղջիւր պի-
տի բուսցընեմ , ու ճրագ պիտի
պատրաստեմ իմ օծեալիս համար ։
18 Անոր թշնամիներուն ամօթ պի-
տի հագցընեմ , բայց անոր վրայ իր
թագը պիտի ծաղկի ։

## ՍԱՂՄ . ՃԼԳ

1—3 Սուրբերուն միաբանութեանը օգուտը ։

Դաւիթի աստիճաններուն երգը ։

1 Ահա որչափ բարի ու որչափ վայե-
լուչ է որ եղբայրները իրարու
հետ միաբանութեամբ բնակին ։
2 Ան Եւաղնիւ իւղին պէս է , որ
գլխուն վրայէն մօրուքին վրայ՝ Ա-
հարոնին մօրուքին վրայ վազեց ,
ու մինչեւ անոր զգեստներուն ծայրը
իջաւ ։
3 Սիօնի լեռներուն վրայ իջած
Հերմոնին շաղին պէս է . ինչու որ
Տէրը հոն հաստատեց օրհնութիւնը
ու կեանքը մինչեւ յաւիտեան ։

## ՍԱՂՄ . ՃԼԴ

1—3 Աստուած օրհնելու յորդորանք մը ։

Աստիճաններուն երգը ։

1 Ահա՛ օրհնեցէ՛ք Տէրը՝ ո՛վ Տէրոջը
բոլոր ծառաները , որ Տէրոջը
տունը կը կենաք գիշերները ։
2 Սուրբ տեղը ձեռքերնիդ վեր-
ցուցէ՛ք , ու օրհնեցէ՛ք Տէրը ։
3 Երկինքը ու երկիրը ստեղծող
Տէրը թող օրհնէ՛ քեզ Սիօնէն ։

## ՍԱՂՄ . ՃԼԵ

1 Աստուած գովելու յորդորանք մը՝ իր ողոր-
մութեանը համար , 5 իր կարողութեանը հա-
մար , 8 իր դատաստաններուն համար ։ 15
Կուռքերուն ունայնութիւնը ։ 19 Աստուած
օրհնելու յորդորանք մը ։

1 Ալէլուիա ։ Օրհնեցէ՛ք Տէրոջը ա-
նունը , օրհնեցէ՛ք՝ ո՛վ Տէրոջը
ծառաները ,
2 Որ Տէրոջը տունը կը կենաք ,
մեր Աստուծոյն տանը սրահներուն
մէջը ։
3 Օրհնեցէք Տէրը , ինչու որ Տէ-
րը բարի է . սաղմոս ըսէք անոր ա-
նուանը , ինչու որ քաղցր է ։
4 Վասն զի Տէրը իրեն համար
ընտրեց Յակոբը , ու Իսրայէլը ի-
րեն սեպհական ժողովուրդ ըլլալու ։
5 Վասն զի ես իմացայ , որ Եհո-
վան մեծ է , ու մեր Տէրը բոլոր աս-
տուածներէն ։
6 Տէրը ամէն ինչ որ ուզեց ըրաւ ,
երկինքի ու երկրի մէջ , ծովերուն
ու բոլոր անդունդներուն մէջը ։
7 Երկրի ծայրերէն շոգիներ կը
հանէ , ժանձրեւի համար փայլակներ
կը շինէ , ու հով կը հանէ իր
շտեմարաններէն ։
8 Անիկայ Եգիպտոսին առջինեկ-
ները զարկաւ մարդէ մինչեւ անա-
սուն .
9 Նշաններ ու հրաշքներ խրկեց
քու մէջդ՝ ո՛վ Եգիպտոս , Փարա-
ւոնին ու անոր բոլոր ծառաներուն
վրայ .
10 Շատ ազգեր զարկաւ , ու զօ-
րեղ թագաւորներ սպաննեց ,
11 Ամորհացւոց Սեհոն թագաւորը ,
Բասանի Ովգ թագաւորը , եւ Քա-
նանու բոլոր թագաւորութիւննե-
րը .
12 Ու անոնց երկիրը ժառանգու-
թիւն տուաւ , իր Իսրայէլ ժողո-
վուրդին ժառանգութիւն ։
13 Ո՛վ Տէր՝ քու անունդ մինչեւ
յաւիտեան է . ո՛վ Տէր՝ քու
յիշատակդ ազգէ մինչեւ ազգ ։
14 Ինչու որ Տէրը իր ժողովուրդը

ͭ Գոր . Է . 46 ։
ͧ Ա Թագ . ԺԷ . 12 ։ Ա Թագ . Է . 1 ։
ͭ Ա Մն . ԺԳ . 5 ։
ͩ Սաղ . Ծ . Ղ ։ ՂԹ . 5 ։
ͩ Թու . Ժ . 35 ։ Բ Մն . Զ . 41 , 42 ։
ͩ Սաղ . ՀԸ . 61 ։
ͥ Յոբ . ԻԹ . 14 ։ Հմր 16 ։ Եփ . Կա . 10 ։
Լ Սաղ . ՁԹ . 3 ։ 4 ։ 33 ։ Ճ ։ ՃԺ . 4 ։
ͩ Բ Թագ . Է . 12 ։ Գ Թագ . Ը . 25 ։ Բ Մն . Զ . 16 ։ Ղու . Ա . 69 ։ Գոր . Բ . 30 ։
ͩ Սաղ . ԽԸ . 1 ։ 2 ։
Սաղ . ԿԸ . 16 ։
Սաղ . ՃԽԵ . 14 ։
Բ Մն . Զ . 41 ։ Հմր 9 ։ Սաղ . ՃԽԹ . 4 ։
Ովս . ԺԲ . 1 ։
Եզեկ . ԻԹ . 21 ։ Ղու . Ա . 69 ։
Գ Թագ . ԺԱ . 36 ։ ԺԵ . 4 ։ Բ Մն . ԻԱ . 7 ։
Սաղ . ԼԵ . 26 ։ ՃԹ . 29 ։
Ծն . ԺԳ . 8 ։ Եբր . ԺԴ . 1 ։
Եւ . Ւ . 25 , 30 ։

Բ Օր . Գ . 48 ։
Սաղ . ՃԼԵ . 1 , 2 ։
Ա Մն . Թ . 33 ։
Ա Տիմ . Բ . 8 ։
Սաղ . ՃԻԴ . 8 ։
Սաղ . ՃԻԵ . 5 ։ ՃԼԵ . 21 ։
Սաղ . ՃԺԳ . 1 ։ ՃԼԴ . 1 ։
Ղու . Բ . 37 ։
Սաղ . ՂԲ . 13 ։ ՂԳ . 8 ։ ՃԺԳ . 19 ։
Սաղ . ՃԺԹ . 68 ։
Սաղ . ՃԽԵ . 1 ։
Եւ . ԺԹ . 5 ։ Բ Օր . Է . 6 ։ 7 ։ Ժ . 15 ։
Սաղ . ՂԵ . 3 ։ ՂԷ . 9 ։
Սաղ . ՃԺԵ . 3 ։
Երեմ . Ժ . 13 ։ ԾԱ . 16 ։
Յոբ . ԻԸ . 25 , 26 ։ ԼԸ . 25 ։ Ճ ։ Զաք . Ժ . 1 ։
Յոբ . ԼԸ . 22 ։
Եւ . ԺԲ . 12 , 29 ։ Սաղ . ՀԸ . 51 ։ ՃԼԶ . 10 ։
Եւ . Է . Ը . Թ . Ժ . ԺԴ ։
Սաղ . ՃԼԶ . 15 ։
Թու . ԻԱ . 24 , 25 , 26 ։ 34 , 35 ։ Սաղ . ՃԼԶ . 17 , Ճ ։
Յես . ԺԲ . 7 ։
Սաղ . ՀԸ . 55 ։ ՃԼԶ . 21 , 22 ։
Եւ . Գ . 15 ։ Սաղ . ՃԲ . 12 ։
Բ Օր . ԼԲ . 36 ։

կը դատէ, և իր ծառաներուն կ'ո-
ղորմի ։
15 Հեթանոսաց կուռքերը ար-
ծաթ ու ոսկի են. մարդու ձեռքի
գործքեր են.
16 Բերան ունին՝ բայց չեն խօսիր.
աչքեր ունին՝ բայց չեն տեսներ.
17 Ականջներ ունին՝ բայց չեն լսեր,
ու շունչ չկայ անոնց բերնին մէջը ։
18 Անոնց նման *ըլլան անոնք շի-
նողները ։ Ու բոլոր անոնց յուսա-
ցողները ։
19 Ո՛վ Իսրայէլի տունը՝ օրհնեցէք
Տէրը. ո՛վ Ահարոնի տունը՝ օրհնե-
ցէք Տէրը.
20 Ո՛վ Ղևիի տունը՝ օրհնեցէք Տէ-
րը. ո՛վ Տէրոջմէն վախցողներ՝ օրհ-
նեցէ՛ք Տէրը ։
21 Օրհնեա՛լ ըլլայ Տէրը Սիօնէն,
ան որ Երուսաղէմի մէջ կը բնակի ։
Ալէլուիա ։

## ՍԱՂՄ. ՃԼԶ

1—26 Աստուծոյ մասնաւոր ողորմութիւններուն համար՝ իրեն շնորհակալութիւն մատուցանելու յորդորանք մը ։

1 Գոհացէ՛ք Տէրոջմէն, ինչու որ
բարի է. ինչու որ անոր ո-
ղորմութիւնը յաւիտեան է.
2 Գոհացէ՛ք աստուածներուն Աս-
տուծմէն. ինչու որ անոր ողորմու-
թիւնը յաւիտեան է.
3 Գոհացէ՛ք տէրերուն Տէրոջմէն.
ինչու որ անոր ողորմութիւնը յա-
ւիտեան է.
4 Մինակ մեծ հրաշքներ ընողէն.
ինչու որ անոր ողորմութիւնը յա-
ւիտեան է.
5 Երկինքը իմաստութեամբ ըս-
տեղծողէն. ինչու որ անոր ողոր-
մութիւնը յաւիտեան է.
6 Երկիրը ջուրերուն վրայ տարա-
ծողէն. ինչու որ անոր ողորմու-
թիւնը յաւիտեան է.
7 Մեծամեծ լուսաւորներ ստեղ-
ծողէն. ինչու որ անոր ողորմու-
թիւնը յաւիտեան է.
8 Արեգակը՝ որ ցորեկին իշխէ.
ինչու որ անոր ողորմութիւնը յա-
ւիտեան է.
9 Լուսինը ու աստղերը՝ որ գիշերին
իշխեն. ինչու որ անոր ողորմու-
թիւնը յաւիտեան է.
10 Եգիպտացւոց անդրանիկները
զարնողէն. ինչու որ անոր ողոր-
մութիւնը յաւիտեան է.
11 Ու Իսրայէլը անոնց մէջէն հա-
նողէն. ինչու որ անոր ողորմու-
թիւնը յաւիտեան է.
12 Հզօր ձեռքով ու տարածուած
բազուկով. ինչու որ անոր ողոր-
մութիւնը յաւիտեան է.
13 Կարմիր ծովը երկուքի բաժնո-
ղէն. ինչու որ անոր ողորմութիւ-
նը յաւիտեան է.
14 Ու Իսրայէլը անոր մէջէն անցը-
նողէն. ինչու որ անոր ողորմու-
թիւնը յաւիտեան է.
15 Եւ Փարաւոնը ու անոր զօրքը
Կարմիր ծովուն մէջը թօթվողէն.
ինչու որ անոր ողորմութիւնը յա-
ւիտեան է.
16 Իր ժողովուրդը անապատին
մէջը պտըտցընողէն. ինչու որ ա-
նոր ողորմութիւնը յաւիտեան է.
17 Մեծ թագաւորներ զարնողէն.
ինչու որ անոր ողորմութիւնը յա-
ւիտեան է.
18 Ու զօրեղ թագաւորներ սպան-
նողէն. ինչու որ անոր ողորմու-
թիւնը յաւիտեան է.
19 Ամօրհացւոց Սեհոն թագաւո-
րը. ինչու որ անոր ողորմութիւնը
յաւիտեան է.
20 Ու Բասանի Ովգ թագաւորը.
ինչու որ անոր ողորմութիւնը յա-
ւիտեան է.
21 Եւ անոնց երկիրը ժառանգու-
թիւն տուողէն. ինչու որ անոր ո-
ղորմութիւնը յաւիտեան է.
22 Իր Իսրայէլ ծառային ժառան-
գութիւն. ինչու որ անոր ողոր-
մութիւնը յաւիտեան է.
23 Մեր խոնարհութեանը մէջ մեզ
յիշողէն. ինչու որ անոր ողորմու-
թիւնը յաւիտեան է.
24 Ու մեր թշնամիներէն մեզ փրկո-
ղէն. ինչու որ անոր ողորմութիւ-
նը յաւիտեան է.
25 Բոլոր մարմինի հաց տուողէն.
ինչու որ անոր ողորմութիւնը յա-
ւիտեան է.
26 Գոհացէ՛ք երկինքին Աստուծմէն.
ինչու որ անոր ողորմութիւնը յա-
ւիտեան է ։

## ՍԱՂՄ. ՃԼԷ

1 Կրօնքի կողմէ հրէից անդրդուելի բնութիւնը գերութեան մէջ ։ 7 Մարգարէն կ'անիծէ Եդովմը ու Բաբիլոնը ։

1 Բաբիլոնի գետերուն քովը՝ հոն
կը նստէինք, ու Սիօնը միտ-
քերնիս բերելով կու լայինք ։
2 Անոր մէջը ուռիներուն վրայ կա-
խեցինք մեր քնարները ։
3 Ինչու որ մեզ գերի ընողները
հոն մեզմէ երգ մը խնդրեցին, ու
մեր ‡կողոպտիչները ուրախու-
թիւն, ըսելով. Երգեցէ՛ք մեզի Սի-
օնին երգերէն ։
4 Տէրոջը երգը ի՞նչպէս երգենք օ-
տար երկրի մէջ ։
5 Ո՛վ Երուսաղէմ՝ թէ որ քեզ
մոռնամ, թող իմ աջ ձեռքս իր
ճարտարութիւնը մոռնայ.
6 Թող իմ լեզուս իմ քիմացս

Սաղ. ճժե. 4. 5, 6. 7. 8 ։
* Կամ՝ պիտի ըլլան
Սաղ. ճժե. 9, 10 ։
Սաղ. ճլդ. 3 ։
Սաղ. ճզ. 1 ։ ճե. 1 ։ ճժը. 1 ։
Մն. ժզ. 34. 41 ։ բ Մն. ի. 21 ։
բ Օր. ժ. 17 ։
Սաղ. հբ. 18 ։
Ծն. ա. 1 ։ Առակ. գ. 19 ։ Երեմ. ծա. 15 ։
Ծն. ա. 9 ։ Սաղ. իդ. 2 ։ Երեմ. ժ. 12 ։
Ծն. ա. 14 ։
Ծն. ա. 16 ։
Ել. ժբ. 29 ։ Սաղ. ճլե. 8 ։
† Եբր. Եգիպտացիները իրենց անդրանիկներուն մէջը
Ել. ժբ. 51 ։ ժգ. 3. 17 ։
Ել. զ. 6 ։
Ել. ժդ. 21, 22 ։ Սաղ. հը. 13 ։
Ել. ժդ. 27 ։ Սաղ. ճլե. 9 ։
Ել. ժգ. 18 ։ ժե. 22 ։ բ Օր. ը. 15 ։
Սաղ. ճլե. 10, 11 ։
բ Օր. իթ. 7 ։
Թուե. իա. 21 ։
Թուե. իա. 33 ։
Յես. ժբ. 1, 7 ։ Սաղ. ճլե. 12 ։
Ծն. ը. 1 ։ բ Օր. լբ. 36 ։ Սաղ. ճժգ. 7 ։
Սաղ. ճդ. 27 ։ ճխե. 15 ։ ճխէ. 9 ։
Սաղ. հթ. 1 ։
‡ Կամ՝ գերիչները
Եզեկ. գ. 26 ։

փակչի, թէ որ քեզ չյիշեմ, թէ
որ Երուսաղէմը իմ գլխաւոր ու-
րախութենէս աւելի մեծ չհամա-
րիմ։
7 Յիշէ՛ ով Տէր՝ գԵդովմի որդինե-
րը Երուսաղէմի օրուանը մէջ, որ
կ'ըսէին. Փլցուցէ՛ք փլցուցէ՛ք մին-
չև անոր հիմը։
8 Ո՛վ Բաբիլոնի *աւերող աղջիկը՝
երանի անոր, որ քեզի կը հատու-
ցանէ դմեզի ըրած գործքերուդ
փոխարէնը.
9 Երանի անոր՝ որ եքու զաւակ-
ներդ կը բռնէ ու քարի կը զարնէ։

գ Երեմ. խթ. 7. Ա. Ողբ. դ. 22. Եզեկ. իե. 12. Աբդ. 10, Ա.
* Կամ՝ աւրուելու.
Ես. ժգ. 1, 6. Ա. խէ. 1. Երեմ. իե. 12. ծ. 2.
դ Երեմ. ծ. 15, 29. Յայտ. ժը. 6.
ե Ես. ժգ. 16.

## ՍԱՂՄ. ՃԼԸ

1 Դաւիթ կը գովաբանէ զԱստուած իր խօսքին ճշմարտութեանը համար. 4 կը մարգարէանայ թէ՝ երկրի թագաւորները զԱստուած պիտի գովաբանեն. 7 իր վստահութիւնը Աստուծոյ վրայ ըլլալ կը ցուցընէ։

Սաղմոս Դաւթի։

1 Քեզի գոհութիւն պիտի մատու-
ցանեմ իմ բոլոր սրտովս.
ա†աստուածներուն առջին քեզի
սաղմոս պիտի երգեմ։
2 բԵրկրպագութիւն պիտի ընեմ
գդէպ'ի քու սուրբ տաճարդ. և
քու անուանդ գոհութիւն պիտի
մատուցանեմ քու ողորմութեանդ
ու ճշմարտութեանդ համար. ին-
չու որ քու բոլոր անուանէդ վեր
դմեծցուցիր քու խօսքդ։
3 Կանչած օրս պատասխան տուիր
ինծի, իմ անձիս մէջը զօրութիւ-
նով զիս ուժովցուցիր։
4 Ո՛վ Տէր՝ եերկրին բոլոր թագա-
ւորները քեզի գոհութիւն պիտի
մատուցանեն, երբոր քու բերնիդ
խօսքերը լսեն.
5 Ու Տէրոջը ճամբաներուն մէջը
պիտի երգեն. ինչու որ Տէրոջը
փառքը մեծ է։
6 զԹէպէտ Տէրը բարձր է, բայց
էցածը եղողը կը տեսնէ, ու բարձ-
րամիտը հեռուէն կը ճանչնայ։
7 ըԵթէ որ նեղութեան մէջ ալ քա-
լեմ, դուն զիս պիտի կենդանացը-
նես. իմ թշնամիներուս բարկու-
թեանը դէմ քու ձեռքդ պիտի եր-
կընցընես, և քու աջ ձեռքդ զիս
պիտի փրկէ։
8 թՏէրը պիտի գործէ ինծի հա-
մար. ո՛վ Տէր՝ քու ողորմութիւնդ
յաւիտեան է. ժքու ձեռացդ գործ-
քերը երեսէ մի՛ ձգեր։

ա Սաղ. ճժթ. 46.
† Կամ՝ հրեշտակներուն, կամ՝ դատաւորներուն, կամ՝ Աստուծոյ
բ Սաղ. իը. 2.
գ Գ Թագ. ը. 29. 30. Սաղ. ե. 7.
դ Ես. խբ. 21.
ե Սաղ. ճբ. 15, 22.
զ Սաղ. ճժգ. 5, 6. Ես. ծէ. 15.
է Առակ. գ. 34. Յակ. դ. 6. Ա Պետ. ե. 5.
ը Սաղ. իգ. 3, 4.
թ Սաղ. ծէ. 2. Փիլ. ա. 6.
ժ Տես Յոբ. ժ. 3, 8. ժդ. 15.

## ՍԱՂՄ. ՃԼԹ

1 Դաւիթ կը գովաբանէ զԱստուած իր ամենատես նախախնամութեանը, 17 ու իր անհուն ողորմութիւններուն համար. 19 չարերը կը նախատէ. 23 իր հաւատարիմ ըլլալուն համար կ'աղօթէ։

Գլխաւոր երգեցողին. Սաղմոս Դաւ-
թի։

1 Ո՛վ Տէր՝ աիս քննեցիր ու ճանչ-
ցար։
2 բԴուն գիտես իմ նստիլս ու ել-
լելս. գիմ խորհուրդս հեռուանց
կ'իմանաս։
3 դԻմ շաւիղս ու պառկիլս կը
քննես. ու իմ բոլոր ճամբաներս
գիտես։
4 Ինչու որ բնաւ խօսք չկայ իմ լե-
զուիս վրայ,ահա ո՛վ Տէր՝ եդուն
ամէնը գիտես։
5 Իմ ետեւէս ու առջեւէս զիս պա-
շարեցիր, և քու ձեռքդ իմ վրաս
դրիր։
6 զԱյս գիտութիւնը ինծի խիստ
զարմանալի է. բարձր է որ չեմ
կրնար հասկընալ անիկայ։
7 էՈ՞ւր երթամ քու Հոգիէդ, և
քու երեսէդ ո՞ւր փախչիմ։
8 ըԵթէ որ երկինքը ելլեմ, դուն հոն
ես. թԹէ որ դժոխքը անկողինս
ընեմ, ահա դուն հոն ես.
9 Թէ որ արշալոյսին թեւերը առ-
նեմ՝ և ծովուն վերջի ծայրերը բը-
նակիմ,
10 Հոն ալ քու ձեռքդ ինծի պիտի
առաջնորդէ, ու քու աջ ձեռքդ
զիս պիտի բռնէ։
11 Թէ որ ըսեմ, Իրաւցընէ խաւա-
րը զիս պիտի ծածկէ, ան ատենը
գիշերն ալ լոյս կ'ըլլայ իմ բոլոր-
տիքս։
12 ժՄութն ալ քեզի խաւար չէ.
հապա գիշերը ցորեկի պէս լուսա-
ւոր կ'ըլլայ. խաւարը և լոյսը մէ և
նոյն բան է քու առջեւ։
13 Ինչու որ դուն ‡ստեղծեցիր իմ
երիկամունքներս, ու իմ մօրս որո-
վայնին մէջը դուն զիս ծածկեցիր։
14 Կը գոհանամ քեզմէ, որ ահա-
ւոր ու զարմանալի կերպով ստեղ-
ծուեցայ. քու գործքերդ զարմա-
նալի են, ու իմ անձս աղէկ գիտէ։
15 իԻմ գոյութիւնս չծածկուեցաւ
քեզմէ, երբոր գաղտուկ տեղը շի-
նուեցայ, երկրի խորութեանցը մէջ
‖ճարտարութեամբ կազմուեցայ։
16 Քու աչքերդ իմ անկատար կազ-
մուածքս տեսան. ու անդամներս
բոլորը քու գրքիդ մէջը գրուած
էին, որ ժամանակին պիտի կազ-
մուէին, երբոր դեռ անոնցմէ մէկը
չկար։
17 լՈ՛րչափ պատուական են ինծի
քու խորհուրդներդ՝ ո՛վ Աստուած.
ո՛րչափ մեծ է անոնց թիւը։
18 Թէ որ համրեմ անոնք, աւազէն
շատ են. երբոր արթըննամ, դեռ
քեզի հետ եմ.
19 Իրաւցընէ խամբարիշտը պիտի

ա Սաղ. ժէ. 3. Երեմ. ժբ. 3.
բ Դ Թագ. ժթ. 27.
գ Մատ. թ. 4. Յով. բ. 24, 25.
դ Յոբ. լա. 4.
ե Եբր. դ. 13.
զ Յոբ. խբ. 3. Սաղ. խ. 5. ճլա. 1.
է Երեմ. իգ. 24. Յովն. ա. 3.
ը Ամով. թ. 2, 3, 4.
թ Յոբ. իզ. 6. Առակ. ժե. 11.
ժ Յոբ. իզ. 6. լդ. 22. Դան. բ. 22. Եբր. դ. 13.
‡ Կամ՝ ըստացար
ի Յոբ. ժ. 8, 9. Ժող. ժա. 5.
‖ Եբր. Նկարակերպեցայ.
լ Սաղ. խ. 5.
խ Ես. ժա. 4.

սպաննես՝ ո՛վ Աստուած. ծ ուրեմն ո՛վ արիւնահեղ մարդիկ՝ հեռացէ՛ք ինծմէ ։

ծ Սաղ. ճժթ. 115 ։

20 Անոնք կ քեզի դէմ նենգութեամբ կը խօսին. և քու *թշնամիներդ ՙքու անունդ՚ պարապ տեղը կ'առնեն" ։

կ Յուդ. 15 ։
* Կամ՝ քաղաքներդ անիրաւութեամբ կ'առնեն ։

21 ՙՔեզ ատողները չե՞մ ատեր՝ ո՛վ Տէր, ու քեզի դէմ ելլողներէն չե՞մ զզուիր ։

հ Բ Մն. ժթ. 2 ։ Սաղ. ճժթ. 158 ։

22 Զանոնք կատարեալ ատելութեամբ կ'ատեմ, և ինծի թշնամի կը համարիմ ։

23 յ Փորձէ՛ զիս՝ ո՛վ Աստուած, ու գիտցի՛ր իմ սիրտս. իս քննէ՛ ու գիտցի՛ր իմ մտածմունքներս,

յ Յոբ. լա. 6 ։ Սաղ. իզ. 2 ։

24 Եւ նայէ՛ թէ արդեօք չար ճամբու մէջ եմ, և ն զիս դէպ 'ի յաւիտենական ճամբա՛ն առաջնորդէ ։

ն Սաղ. ե. 8 ։ Ճիգ. 10 ։

## ՍԱՂՄ. ՃԽ

1 Դաւիթ իր թշնամիներուն ձեռքէն ազատութիւն կը խնդրէ. 8 անոնց դէմ կ'աղօթէ. 12 Աստուծոյ վրայ իր ունեցած վստահութեամբը զինքը կը քաջալերէ ։

Գլխաւոր երգեցողին. Սաղմոս Դաւթի ։

1 Ո՛վ Տէր՝ չար մարդէն զիս փրկէ՛, ու ա բռնաւոր մարդէն զիս պահէ՛,

ա Հմր 4 ։

2 Որ անոնք սրտերնուն մէջ չար բաներ կը մտածեն, ու բ ամէն օր կռիւներու համար կը ժողվուին ։

բ Սաղ. ծզ. 6 ։

3 Իրենց լեզուները օձի պէս սրեցին. գ իժի թոյն կայ անոնց շրթունքներուն տակը ։ (Սէլայ ։)

գ Սաղ. ծը. 4 ։ Հռով. գ. 13 ։

4 Ո՛վ Տէր՝ դ զիս ամբարշտին ձեռքէն պահէ՛. ե զիս բռնաւոր մարդէն պահպանէ՛, որոնք իմ գնացքներս խափանելու խորհուրդ ըրին ։

դ Սաղ. հա. 4 ։
ե Հմր 1 ։

5 զ Ամբարտաւանները ինծի համար գաղտնի որոգայթ ու չուաններ լարեցին. ուռկան մը փռեցին իմ ճամբուս վրայ. վարմեր դրին ինծի համար ։ (Սէլայ ։)

զ Սաղ. լե. 7 ։ ծէ. 6 ։ ճժթ. 110 ։ Ճիս. 9 ։ Երեմ. ժը. 22 ։

6 Ըսի Տէրոջը. Դուն ես իմ Աստուածս. ո՛վ Տէր՝ լսէ՛ իմ աղաչանքիս ձայնը ։

7 Ո՛վ Տէր Եհովայ՝ իմ փրկութեանս զօրութիւնը, դուն իմ գլխուս հովանի եղար պատերազմին օրը ։

8 Ո՛վ Տէր՝ ամբարշտին ցանկութիւնները մի՛ տար. անոր չար խորհուրդը մի՛ յաջողեր. է որ չըլլայ թէ բարձրանան ։ (Սէլայ ։)

է Բ Օր. լբ. 27 ։

9 Իս պաշարողներուն գլուխը՝ ը իրենց շրթունքներուն աշխատութիւնը պիտի ծածկէ ։

ը Սաղ. է. 16 ։ ԿԴ. 23 ։ Առակ. ժբ. 13 ։ ժը. 7 ։

10 թ Վառած ածուխներ պիտի իյնան անոնց վրայ. կրակի մէջ պիտի ձգէ զանոնք, ու խորունկ ջուրերու մէջ, որ բնաւ վեր չելլեն ։

թ Սաղ. ժա. 6 ։

11 Չարախօս մարդը երկրի վրայ պիտի չհաստատուի. թշուառութիւնը պիտի որսայ բռնաւոր մարդը, որ զանիկայ կործանէ ։

12 Գիտեմ որ Տէրը ժ դատաստան պիտի ընէ խեղճին, ու իրաւունք՝ աղքատներուն ։

ժ Գ Թագ. ը. 45 ։ Սաղ. թ. 4 ։

13 Ցիրաւի արդարները քու անունդ պիտի գովեն. ուղիղները քու առջեւդ պիտի բնակին ։

## ՍԱՂՄ. ՃԽԱ

1 Դաւիթ կ'աղաչէ որ իր աղօթքը ընդունելի ըլլայ. 3 իր խղճմտանքը մաքուր. 7 ու իր կեանքը որոգայթներէն ազատ ։

Սաղմոս Դաւթի ։

1 Ո՛վ Տէր՝ քեզի կը կանչեմ, ա շուտո՛վ հասիր ինծի. ակա՛նջ դիր իմ ձայնիս՝ երբոր քեզի կը կանչեմ ։

ա Սաղ. հ. 5 ։

2 բ Թող իմ աղօթքս խունկի պէս քեզի շիտկուի. և գ իմ ձեռքերուս վեր վերցուիլը դ իրիկուան պատարագին պէս ։

բ Յայտ. ե. 8 ։ ը. 3, 4 ։
գ Սաղ. ճլդ. 2 ։ Ա Տիմ. բ. 8 ։
դ Ել. իթ. 39 ։

3 Ո՛վ Տէր՝ պահապա՛ն դիր իմ բերնիս. ու իմ շրթունքներուս դուռը պահպանէ՛ ։

4 Իմ սիրտս չար բանի ետեւէ խոտորելու մի՛ թողուր, որ անօրէնութիւն գործող մարդոց հետ դէշ գործքեր չընեմ, ե ու անոնց համադամ կերակուրներէն չուտեմ ։

ե Առակ. իգ. 6 ։

5 զ Արդարը թող զիս զարնէ. ան ողորմութիւն է. և զիս յանդիմանէ. ան գլխու իւղ է. իմ գլուխս չմերժէ զանիկայ. ինչու որ անոնց նեղութիւններուն մէջն ալ պիտի աղօթեմ ։

զ Տե՛ս Առակ. թ. 8 ։ ժթ. 25 ։ իե. 12 ։ Գաղ. զ. 1 ։

6 Երբոր անոնց դատաւորները ապառաժներու մէջ ձգուին, ան ատենը իմ խօսքերս պիտի լսեն, ինչու որ քաղցր են ։

7 Ինչպէս որ է հերկողը ու ճեղքողը կը ցրուէ երկրի վրայ, անանկ ալ մեր ոսկորները ը գերեզմանին բերանը ցիրուցան եղան ։

է Կամ՝ փայտ կտրողը
ը Բ Կոր. ա. 9 ։

8 Սակայն ո՛վ Տէր Եհովայ, թ իմ աչքերս դէպ 'ի քեզի են. քեզի յուսացայ, իմ հոգիս մի՛ մերկացըներ ։

թ Բ Մն. ի. 12 ։ Սաղ. իե. 15 ։ ճիգ. 1, 2 ։

9 ժ Ինծի համար լարուած որոգայթէն, ու անօրէնութիւն գործողներուն վարմերէն զիս պահէ՛ ։

ժ Սաղ. ճժթ. 110 ։ ճի. 5 ։ ճխբ. 3 ։

10 ժա Ամբարիշտները իրենց ցանցերուն մէջը պիտի իյնան, երբոր ես բոլորովին անցնիմ ։

ժա Սաղ. լե. 8 ։

## ՍԱՂՄ. ՃԽԲ

1—7 Դաւիթ կը ցուցնէ թէ՝ իր նեղութեանը մէջ իր բոլոր մխիթարութիւնը Աստուծոյ աղօթելն է ։

Դաւիթին երգը ու աղօթքը՝ ա երբոր ինքը այրին մէջն էր ։

ա Ա Թագ. իբ. 1 ։ իդ. 3 ։

1 Իմ ձայնովս Տէրոջը կ'աղաղակեմ. իմ ձայնովս Տէրոջը կ'աղաչեմ ։

2 բ Իմ գանգատս անոր առջին կը թափեմ . իմ նեղութիւնս անոր առջին կը պատմեմ ։
3 գ Երբոր հոգիս իմ մէջս կը մարէր , դուն իմ շաւիղս գիտցար . իմ դ քալած ճամբուս մէջ ինծի համար գաղտուկ որոգայթ լարեցին ։
4 Նայէ՛ աջ կողմը ու տե՛ս որ ե բնաւ իս ճանչցող մը չկայ . ապաւէնը ինծմէ կորսուեցաւ . բնաւ մէկը չկայ՝ որ իմ անձիս համար հոգ ընէ ։
5 Ո՛վ Տէր՝ քեզի աղաղակեցի , ու ըսի . զ Դուն ես իմ ապաւէնս , և է իմ վիճակս ը կենդանեաց երկրին մէջ ։
6 Ականջ դիր իմ աղաղակիս , ինչու որ թ շատ նուաստացայ . ազատէ՛ զիս իմ հալածիչներէս , ինչու որ ինծմէ զօրաւոր են ։
7 Իմ անձս բանտէն հանէ՛ , որ քու անուանդ գոհութիւն մատուցանեմ . ժ արդարները իմ չորս կողմս պիտի պատեն , ի երբոր ինծի բարութիւն ընես ։

բ Սաղ. ճբ. ին վերնագիրը ։
գ Սաղ. ճխգ. 4 ։
դ Սաղ. ճխ. 5 ։
ե Սաղ. լա. 11 ։ ձը. Տ. 18 ։
զ Սաղ. խզ. 1 ։ ղա. 2 ։
է Սաղ. ժզ. 5 ։ հգ. 26 ։ ճժթ. 57 ։ Ողբ. գ. 24 ։
ը Սաղ. իէ. 13 ։
թ Սաղ. ճժզ. 6 ։
ժ Սաղ. լդ. 2 ։
ի Սաղ. ժգ. 6 ։ ճժթ. 17 ։

## ՍԱՂՄ. ՃԽԳ

1 Դաւիթ աղօթք կ'ընէ՝ դատաստանի մէջ շնորհք գտնելու համար . 3 իր սրտնեղութեանը համար կը գանգատի . 5 իր հաւատքը կը զօրացընէ մտածութիւնով ու աղօթքով . 7 շնորհքի համար , 9 ազատութեան համար . 10 սրբութեան համար . 12 ու իր թշնամիներուն կործանմանը համար կ'աղօթէ ։

Սաղմոս Դաւթի ։

1 Ո՛վ Տէր՝ լսէ՛ իմ աղօթքս , ականջ դիր իմ աղաչանքիս . ա պատասխան տուր ինծի քու ճշմարտութիւնովդ , ու քու արդարութիւնովդ ։
2 Եւ բ քու ծառայիդ հետ դատաստանի մի՛ մտներ . ինչու որ գ բնաւ կենդանի մը պիտի չարդարանայ քու առջիդ ։
3 Վասն զի թշնամին իմ անձս հալածեց . իմ կեանքս գետինը զարկաւ , զիս չատոնցուընէ մեռածներուն պէս մութը նստեցուց ։
4 դ Եւ իմ հոգիս ներսի դիս մարեցաւ , իմ սիրտս ներսի դիս խռովեցաւ ։
5 ե Առջի օրերը կը յիշեմ . քու բոլոր գործքերուդ վրայ կը մտածեմ . քու ձեռացդ ըրածներուն վրայ կը խորհիմ ։
6 զ Ձեռքերս դէպ 'ի քեզի կ'երկընցընեմ . է իմ անձս չոր երկրի պէս քեզի կը ծարաւի ։ (Սէլայ ։)
7 Շուտով պատասխան տուր ինծի՝ ով Տէր , իմ հոգիս մարեցաւ . քու երեսդ մի՛ ծածկեր ինծմէ , ը որ գուբը իջնողներուն պէս չըլլամ ։
8 թ Առտուանց քու ողորմութիւնդ ինծի լսել տուր , ինչու որ քեզի յուսացայ . ժ իմ երթալու ճամբաս ինծի ցուցուր , վասն զի ի իմ անձս դէպ 'ի քեզի վերցուցի ։
9 Ո՛վ Տէր՝ փրկէ զիս իմ թշնամիներէս . ինչու որ քեզ իմ ապաւէնս ըրի ։
10 լ Սորվեցուր ինծի որ քու կամքդ ընեմ . քանզի դուն ես իմ Աստուածս . Թող խ քու բարի Հոգիդ զիս ծ ուղիղ երկիրը առաջնորդէ ։
11 Ո՛վ Տէր՝ քու անուանդ համար կ կենդանացուր զիս . քու արդարութեամբդ իմ անձս նեղութենէ հանէ՛ ։
12 Եւ քու ողորմութեամբդ հ սատկեցուր իմ թշնամիներս , ու կորսընցուր բոլոր իմ անձս վշտացընողները . ինչու որ ձ ես քու ծառադ եմ ։

ա Սաղ. լա. 1 ։
բ Յոբ. ժդ. 3 ։
գ Ել. լդ. 7 ։ Յոբ. դ. 17 ։ թ. 2 ։ ժե. 14 ։ իե. 4 ։ Սաղ. ճլ. 3 ։ Ժող. է. 20 ։ Հռով. գ. 20 ։ Գաղ. բ. 16 ։
դ Սաղ. հէ. 3 ։ ճխբ. 3 ։
ե Սաղ. հէ. 5. 11 ։
զ Սաղ. ձը. 9 ։
է Սաղ. կդ. 1 ։
ը Սաղ. իը. 1 ։
թ Տես Սաղ. խզ. 5 ։
ժ Սաղ. ե. 8 ։
ի Սաղ. իե. 1 ։
լ Սաղ. իե. 4. 5 ։ ճլթ. 24 ։
խ Նեեմ. թ. 20 ։
ծ Ես. իզ. 10 ։
կ Սաղ. ճժթ. 25. 37, 40. ճ ։
հ Սաղ. ծդ. 5 ։
ձ Սաղ. ճժզ. 16 ։

## ՍԱՂՄ. ՃԽԴ

1 Դաւիթ թէ՛ իրեն և թէ մարդոց եղած ողորմութեանը համար զԱստուած կ'օրհնէ . 5 կը խնդրէ Աստուծմէ որ նշանաւոր կերպով ազատէ զինքը իր թշնամիներէն . 9 կը խոստանայ զԱստուած գովել . 11 իր թագաւորութեանը երջանիկ վիճակին համար կ'աղօթէ ։

Սաղմոս Դաւթի ։

1 Օրհնեալ ըլլայ Տէրը՝ ա իմ Վէմս , բ որ իմ ձեռքերս մարտնչելու կը վարժէ , ու իմ մատերս պատերազմելու ։
2 գ Անիկայ է իմ ողորմութիւնս ու պարիսպս , իմ ապաւէնս ու իմ փրկիչս , իմ վահանս , և ես անոր կը յուսամ , որ իմ ժողովուրդս ինծի կը հնազանդեցընէ ։
3 դ Ո՛վ Տէր՝ մարդը ի՞նչ է որ զանիկայ կը ճանչնաս , ու մարդու որդին՝ որ զանիկայ կը յարգես ։
4 ե Մարդը ունայնութեան պէս է , զ անոր օրերը՝ անցնող շուքի պէս են ։
5 է Ո՛վ Տէր՝ խոնարհեցուր քու երկինքդ , ու վա՛ր իջիր . ը լեռներուն դպչէ՛ ու պիտի մխան ։
6 թ Փայլակը նետէ՛ ու ցրուէ՛ զանոնք . քու նետերդ խրկէ՛ ու զանոնք խռովեցուր ։
7 ժ Քու ձեռքդ վերէն խրկէ՛ , և ի ազատէ՛ զիս . փրկէ՛ զիս մեծ ջուրերէն , ու լ օտարներուն ձեռքէն ։
8 խ Որոնց բերանը ունայնութիւն կը խօսի , և անոնց աջ ձեռքը ստութեան աջ ձեռք է ։
9 Ո՛վ Աստուած՝ ծ քեզի նոր երգ պիտի երգեմ . տասը լար ունեցող տաւիղով սաղմոս պիտի ըսեմ քեզի ։
10 կ Թագաւորներուն փրկութիւն տուողը , ու իր Դաւիթ ծառան չար սուրէն ազատողը ան է ։
11 հ Իս ազատէ՛ ու օտարներուն ձեռ-

ա Սաղ. ժը. 2. 31 ։
բ բ Թագ. իբ. 35 ։ Սաղ. ժը. 34 ։
գ բ Թագ. իբ. 2, 3, 40, 48 ։
դ Յոբ. է. 17 ։ Սաղ. ը. 4 ։ Եբր. բ. 6 ։
ե Յոբ. դ. 19 ։ ժդ. 2 ։ Սաղ. լթ. 5 ։ կբ. 9 ։
զ Սաղ. ճբ. 11 ։
է Սաղ. ժը. 9 ։ Ես. կդ. 1 ։
ը Սաղ. հդ. 32 ։
թ Սաղ. ժը. 13. 14 ։
ժ Սաղ. ժզ. 16 ։
ի Հմր. 11 ։ Սաղ. կթ. 1. 2. 14 ։
լ Սաղ. ծդ. 3. Մաղ. բ. 11 ։
խ Սաղ. ժբ. 2 ։
ծ Սաղ. լգ. 2. 3. խ. 3 ։
կ Սաղ. ժը. 50 ։
հ Հմր. 7. 8 ։

քէն փրկէ ; որոնց բերանը ունայնութիւն կը խօսի , և անոնց աջ ձեռքը սուտութեան աջ ձեռք է .

12 Որ մեր որդիքը իրենց երիտասարդութեանը մէջ ³տունկերու պէս մեծնան , ու մեր աղջիկները պալատի շէնքին համար փորագրուած անկիւնի քարերու պէս ըլլան .

³Սաղ. ճիը. 3։

13 Որ մեր ամբարները լեցուին , և ամէն տեսակ կերակուրներ. բղխեն . ու մեր ոչխարները հազարաւոր և բիւրաւոր ծնանին մեր արտերուն մէջը .

14 Որ մեր արջառները *բազմածին ըլլան , ու ամենևին բռնութեամբ մտնել ու ելլել չըլլայ . ոչ ալ աղաղակ՝ մեր հրապարակներուն մէջը ։

* Կամ՝ պարարտ

15 ²Երանի՜ այսանկ վիճակի մէջ եղող ժողովուրդին . երանի՜ այն ժողովուրդին՝ որուն Աստուածը Եհովան է ։

²բՕր. լգ. 29։ Սաղ. լգ. 12։ կե. 4։ ճխզ. 5։

## ՍԱՂՄ . ՃԽԵ

1 Դաւիթ զԱստուած կը գովաբանէ՝ յիշելով անոր համբաւը , 8 անոր բարութիւնը , 11 անոր թագաւորութիւնը , 14 անոր նախախնամութիւնը , 17 ու փրկարար ողորմութիւնը ։

Օրհնութիւն Դաւթի ։

1 Քեզ պիտի բարձրացընեմ՝ ով իմ Աստուածս , որ թագաւոր ես , ու քու անունդ յաւիտեանս յաւիտենից պիտի օրհնեմ ։

2 Ամէն օր քեզ պիտի օրհնեմ , և քու անունդ յաւիտեանս յաւիտենից պիտի գովեմ ։

3 ᵃՄեծ ու խիստ գովելի է Տէրը , ու ᵇանոր մեծութիւնը անքննելի է ։

4 ᶜԱզգ ազգի պիտի գովէ քու գործքերդ , և քու զօրութիւններդ պիտի պատմէ ։

ᵃՍաղ. ղզ. 4։ ճխէ. 5։
ᵇՅոբ. ե. 9։ թ. 10։ Հռով. ժա. 33։
ᶜԵս. լը. 19։

5 Քու փառացդ մեծութեանը վայելչութիւնը , ու քու հրաշալի գործքերդ պիտի զրուցեմ ։

6 Եւ քու ահաւոր գործքերդ պիտի խօսին , ու ես քու մեծութիւնդ պիտի պատմեմ ։

7 Քու մեծ բարերարութեանդ յիշատակը պիտի հրատարակեն , և քու արդարութեամբդ պիտի ցնծան ։

8 ᵈՈղորմած ու գթած է Տէրը . երկայնամիտ և բազումողորմ է ։

9 ᵉՏէրը ամենուն բարի է . ու անոր ողորմութիւնները իր բոլոր գործքերուն վրայ է ։

10 Ո՛վ Տէր՝ ᶠքու բոլոր գործքերդ քեզ պիտի գովեն . և քու սուրբերդ քեզ պիտի օրհնեն ։

11 Քու թագաւորութեանդ փառքը պիտի խօսին , ու քու զօրութիւնդ պիտի պատմեն .

12 Որ անոր վօրաւոր գործքերը ու

ᵈԵլ. լդ. 6, 7։ Թուոց. ժդ. 18։ Սաղ. ձզ. 5, 15։ ճգ. 8։
ᵉՍաղ. ճ. 5։ Նաւ. ա. 7։
ᶠՍաղ. ժթ. 1։

անոր թագաւորութեանը փառաւոր մեծութիւնը մարդոց որդիներուն գիտցընեն ։

13 ᵍՔու թագաւորութիւնդ յաւիտենական թագաւորութիւն է , ու քու տէրութիւնդ ազգէ մինչև ազգ ։

ᵍՍաղ. ճխզ. 10։ Տիմ. ա. 17։

14 Տէրը կը հաստատէ բոլոր իյնալու վրայ եղողները , և ʰբոլոր վար ծռածները կը կանգնեցընէ ։

ʰՍաղ. ճխզ. 8։

15 ⁱԱմենուն աչքերը քեզի կը սպասեն . ու ժամանակին ʲանոնց կերակուրը դուն անոնց կու տաս ։

ⁱՍաղ. ճգ. 27։
ʲՍաղ. ճլզ. 25։

16 Քու ձեռքդ կը բանաս , ᵏու ամէն կենդանիին փափաքը կը լեցընես ։

ᵏՍաղ. ճգ. 21։ ճխէ. 9։

17 Տէրը արդար է իր բոլոր ճամբաներուն մէջ , ու ողորմած է իր բոլոր գործքերուն մէջ ։

18 ˡՏէրը մօտ է այն ամենուն՝ որ զինքը կը կանչեն , այն ամենուն՝ որ ᵐճշմարտութեամբ զինքը կը կանչեն ։

ˡբՕր. դ. 7։
ᵐՅօհ. դ. 24։

19 Անիկայ իրմէն վախցողներուն փափաքը կը լեցընէ , և անոնց աղաղակը կը լսէ , ու կը փրկէ զանոնք ։

20 ⁿՏէրը բոլոր զինքը սիրողները կը պահէ , սակայն բոլոր ամբարիշտները կը կորսընցընէ ։

ⁿՍաղ. լա. 23։ ղէ. 10։

21 Իմ բերանս Տէրոջը գովութիւնը պիտի խօսի , ու ամէն մարմին անոր սուրբ անունը օրհնէ յաւիտեանս յաւիտենից ։

## ՍԱՂՄ . ՃԽԶ

1 Սաղմոսերգուն Աստուծոյ մշտնջենաւոր գովութիւններ մատուցանելու ուխտ կ'ընէ . 3 մարդոց յուսալը կ'արգիլէ . 5 ու Աստուծոյ կարողութիւնը , արդարութիւնը , ողորմութիւնը ու թագաւորութիւնը յիշելով՝ միայն անոր ապաւինիլը արժանաւոր ըլլալ կը հաստատէ ։

1 Ալէլուիա ։ ᵃՕրհնէ Տէրը , ով իմ անձս ,

ᵃՍաղ. ճգ. 1։

2 ᵇՏէրը պիտի օրհնեմ իմ կենացս մէջ , քանի որ ողջ եմ՝ իմ Աստուծոյս սաղմոս պիտի ըսեմ ։

ᵇՍաղ. ճգ. 33։

3 ᶜՄի՛ յուսաք իշխաններուն , մարդու որդիին՝ որուն քովը փրկութիւն չկայ ։

ᶜՍաղ. ճժը. 8, 9։ Ես. բ. 22։

4 ᵈԱնոր հոգին կ'ելլէ , անիկայ իր հողը կը դառնայ . նոյն օրը ᵉանոր խորհուրդները կը կորսուին ։

ᵈՍաղ. ճդ. 29։ Ժող. ժբ. 7։ Ես. բ. 22։
ᵉԱ Կոր. բ. 6։

5 ᶠԵրանի՜ անոր՝ որուն օգնականը Յակոբին Աստուածն է , ու անոր յոյսը իր Տէր Աստուծոյն վրայ է ,

ᶠՍաղ. ճխդ. 15։ Երեմ. ժէ. 7։

6 ᵍԱն որ երկինքը ու երկիրը՝ ծովը ու բոլոր անոնց մէջ եղածը ստեղծեց , ճշմարտութիւն կը պահէ յաւիտեան ,

ᵍԾն. ա. 1։ Յայտ. ժդ. 7։

7 ʰԻրաւունք կ'ընէ զրկուածներուն , ⁱու հաց կու տայ անօթիներուն . ʲՏէրը կ'արձըկէ կապուածները ։

ʰՍաղ. ճգ. 6։
ⁱՍաղ. ճէ. 9։
ʲՍաղ. կը. 6։ ճէ. 10, 14։

8 ᵗ Տէրը կը բանայ կոյրերուն աչ-
քերը . ᵘ Տէրը կը կանգնեցընէ վար
ծռածները . Տէրը կը սիրէ արդար-
ները .
9 ᵛ Տէրը կը պահէ պանդուխտնե-
րը ; կը հաստատէ որբը ու որբևա-
րին . ʷ բայց ամբարիշտներուն ճամ-
ման կը ծռէ :
10 ˣ Տէրը պիտի թագաւորէ յաւի-
տեան , քու Աստուածդ՝ ո՛վ Սիօն ,
ազգէ մինչև ազգ ։ Ալէլուիա ։

## ՍԱՂՄ . ՃԽԷ

1 Մարգարէն կը յորդորէ մարդիկը զԱստուած գովելու՝ իր խնամքին համար որ ունի եկեղեցիին վրայ , 4 իր կարողութեանը համար , 6 իր ողորմութեանը համար , 7 իր նախախնամութեանը համար , 12 Իսրայէլի թագաւորութեանը վրայ իր բերած բարիքներուն համար , 15 մետէորայից վրայ իր ունեցած իշխանութեանը համար , 19 ու եկեղեցւոյ մէջ իր դրած կարգադրութիւններուն համար ։

1 Գովեցէ՛ք Տէրը . ինչու որ ᵃ բարի
է մեր Աստուծոյն սաղմոս ըսելը .
ᵇ ինչու որ քաղցր ու ᶜ վայելուչ է
օրհնութիւնը ։
2 Տէրը ᵈ կը շինէ Երուսաղէմը .
ᵉ Իսրայէլին ցրուածները կը ժողվէ .
3 ᶠ Սրտով կոտրածները կը բժշկէ .
ու անոնց խոցերը կը փաթթէ .
4 ᵍ Աստղերուն թիւը կը համրէ .
անոնց ամէնն ալ իրենց անուններո-
վը կը կանչէ ։
5 ʰ Մեծ է մեր Տէրը , ու ⁱ իր զօ-
րութիւնը շատ է . ʲ անոր իմաս-
տութիւնը անհուն է ։
6 ᵏ Տէրը կը հաստատէ խեղճերը .
ու ամբարիշտները մինչև հողը կը
խոնարհեցընէ ։
7 Երգեցէ՛ք Տէրոջը գոհութիւ-
նով . մեր Աստուծոյն սաղմոս ըսէք
քնարով .
8 ˡ Ան որ երկինքը ամպերով կը
ծածկէ , անձրև կը պատրաստէ
երկրիս համար , խոտ կը բուսցընէ
լեռներուն վրայ .
9 ᵐ Որ անասուններուն իրենց կե-
րակուրը կու տայ , ու ⁿ ագռաւին
ձագերուն՝ որ կ'աղաղակեն ։
10 ᵒ Անիկայ ձիուն զօրութեանը չը-
հաճիր , մարդուն սրունքներուն
չհաւնիր ։
11 Տէրը կը հաւնի իրմէն վախցող-
ներուն , ու իր ողորմութեանը
յուսացողներուն ։
12 * Ո՛վ Երուսաղէմ՝ գովէ՛ Տէրը .
օրհնէ՛ քու Աստուածդ՝ ո՛վ Սիօն ։
13 Ինչու որ անիկայ քու դռներուդ
նիգերը ամրցուց , ու քու որդի-
ներդ քու մէջդ օրհնեց ։
14 ᵖ Անիկայ քու սահմաններուդ
խաղաղութիւն կու տայ , ու ᵠ պա-
րարտ ցորենով քեզ կը կշտացը-
նէ ։
15 ʳ Անիկայ իր խօսքը երկրին մէջ
կը ղրկէ . իր խօսքը շուտով կը
վազէ ։
16 ˢ Անիկայ բուրդի պէս ձիւն կու
տայ , ու եղեամը մոխիրի պէս կը
ցանէ ։
17 Իր սառը պատառներու պէս կը
նետէ . անոր ցուրտին դէմ ո՞վ
կրնայ կենալ ։
18 ᵗ Անիկայ իր խօսքը կը ղրկէ , ու
կը հալեցընէ զանոնք . իր հովը փչել
կու տայ , ու ջուրեր կը վազեն ։
19 ᵘ Անիկայ իր խօսքը կը պատմէ
Յակոբին , և ᵛ իր կանոնները ու
դատաստանները՝ Իսրայէլին ։
20 ʷ Բնաւ մէկ ազգի մը ասանկ չը-
րաւ . ու անոնք անոր դատաստան-
ները չճանչցան ։ Ալէլուիա ։

## ՍԱՂՄ . ՃԽԸ

1 Սաղմոսերգուն զԱստուած գովելու կը յորդորէ երկնաւորները , 7 երկրաւորները , 11 ու բանական ստեղծուածները ։

1 Ալէլուիա ։ Օրհնեցէ՛ք Տէրը եր-
կինքէն . օրհնեցէ՛ք անիկայ բարձր
տեղերուն մէջ ։
2 ᵃ Օրհնեցէ՛ք անիկայ՝ ո՛վ անոր բո-
լոր հրեշտակները . օրհնեցէ՛ք անի-
կայ՝ ո՛վ անոր բոլոր զօրքերը ։
3 Օրհնեցէ՛ք անիկայ՝ ո՛վ արեգակ
ու լուսին . օրհնեցէ՛ք անիկայ՝ ո՛վ
բոլոր փայլուն աստղեր ։
4 Օրհնեցէ՛ք անիկայ ᵇ ո՛վ երկնից
երկինքը , ու ᶜ երկինքէն վեր եղող
ջուրեր ։
5 Թող Տէրոջը անունը օրհնեն .
ինչու որ ᵈ ինքը հրամայեց , ու ա-
նոնք ստեղծուեցան ։
6 ᵉ Եւ զանոնք յաւիտեանս յաւի-
տենից հաստատեց . կանոն դրաւ ,
որ չխափանուիր ։
7 Օրհնեցէ՛ք Տէրը երկրէն , ᶠ ո՛վ վի-
շապներ , ու բոլոր անդունդներ .
8 Կրակ և կարկուտ , ձիւն ու շո-
գի , և ᵍ անոր խօսքը կատարող
մրրկալից հով .
9 ʰ Լեռներ ու բոլոր բլուրներ ,
պտղատու ծառեր ու բոլոր եղևին-
ներ .
10 Գազաններ ու բոլոր անասուն-
ներ , սողացողներ ու թևաւոր
թռչուններ .
11 Երկրի թագաւորներ և բոլոր
ազգեր , իշխաններ ու երկրի բոլոր
դատաւորներ .
12 Երիտասարդներ և կոյս աղջիկ-
ներ , ծերեր ու տղաքներ .
13 Թող Տէրոջը անունը օրհնեն .
ինչու որ ⁱ միայն անոր անունը
բարձր է . ʲ անոր փառքը երկրէն
ու երկինքէն վեր է ։
14 ᵏ Անիկայ բարձրացուց իր ժողո-
վուրդին եղջիւրը , ˡ իր բոլոր սուր-

ᵗ Մատ . Թ . 30 ։ Յովհ . Թ . 7—32 ։
ᵘ Սաղ . ՃԽԵ . 14 ։ ՃԽԷ . 6 ։ Ղու . ԺԳ . 13 ։
ᵛ Բ Օր . Ժ . 18 ։ Սաղ . ԿԸ . 5 ։
ʷ Սաղ . ՃԽԷ . 6 ։
ˣ Ել . ԺԵ . 18 ։ Սաղ . Ժ . 16 ։ ՃԽԵ . 13 ։ Յայտ . ԺԱ . 15 ։

ᵃ Սաղ . ՂԲ . 1 ։
ᵇ Սաղ . ՃԼԵ . 3 ։
ᶜ Սաղ . ԼԳ . 1 ։
ᵈ Սաղ . ՃԲ . 16 ։
ᵉ Բ Օր . Լ . 3 ։
ᶠ Սաղ . ԾԱ . 17 ։ Ես . ԾԷ . 15 ։ ԿԱ . 1 ։ Ղու . Դ . 18 ։
ᵍ Տես Ծն . ԺԵ . 5 ։ Ես . Խ . 26 ։
ʰ Մն . ԺԳ . 25 ։ Սաղ . ԽԸ . 1 ։ ՂԶ . 4 ։ ՃԽԵ . 3 ։
ⁱ Նաւ . Ա . 3 ։
ʲ Ես . Խ . 28 ։
ᵏ Սաղ . ՃԽԶ . 8 , 9 ։
ˡ Յոբ . ԼԸ . 26 , 27 ։ Սաղ . ՃԴ . 13 , 14 ։
ᵐ Յոբ . ԼԸ . 41 ։ Սաղ . ՃԴ . 27 , 28 ։ ՃԼԶ . 25 ։ ՃԽԵ . 15 ։
ⁿ Յոբ . ԼԸ . 41 ։ Մատ . Զ . 26 ։
ᵒ Սաղ . ԼԳ . 16 , 17 , 18 ։ Ովս . Ա . 7 ։
* [illegible]
ᵖ Ես . Կ . 17 , 18 ։
ᵠ Բ Օր . ԼԲ . 14 ։ Սաղ . ՁԱ . 16 ։ ՃԼԶ . 15 ։

ʳ Սաղ . ՃԷ . 20 ։ Տես Յոբ . ԼԷ . 12 ։
ˢ Յոբ . ԼԷ . 6 ։
ᵗ Հմր 15 ։ Տես Յոբ . ԼԷ . 10 ։
ᵘ Բ Օր . ԼԳ . 2 , 3 , 4 ։ Սաղ . ՀԶ . 1 ։ ՀԸ . 5 ։ ՃԳ . 7 ։
ᵛ Մաղ . Դ . 4 ։
ʷ Տես Բ Օր . Դ . 32 , 33 , 34 ։ Հռով . Գ . 1 , 2 ։

ᵃ Սաղ . ՃԳ . 20 , 21 ։
ᵇ Գ Թագ . Ը . 27 ։ Բ Կոր . ԺԲ . 2 ։
ᶜ Ծն . Ա . 7 ։
ᵈ Ծն . Ա . 1 , 6 , 7 ։ Սաղ . ԼԳ . 6 , 9 ։
ᵉ Սաղ . ՁԹ . 37 ։ ՃԺԹ . 90 , 91 ։ Երեմ . ԼԱ . 35 , 36 ։ ԼԳ . 25 ։
ᶠ Ես . ԽԳ . 20 ։
ᵍ Սաղ . ՃԽԷ . 15 , 18 ։
ʰ Ես . ԽԴ . 23 ։ ԽԹ . 13 ։ ԾԵ . 12 ։
ⁱ Սաղ . Ը . 1 ։ Ես . ԺԲ . 4 ։
ʲ Սաղ . ՃԺԳ . 4 ։
ᵏ Սաղ . ՀԵ . 10 ։
ˡ Սաղ . ՃԽԹ . 9 ։

ե Եփե. բ. 17։

բերուն, [ե]իրեն մօտ եղող ժողովուրդին, Իսրայէլի որդւոցը օրհնութիւնը։ Ալէլուիա։

## ՍԱՂՄ. ՃԽԹ

1 Մարգարէն կը յորդորէ մարդիկը որ զԱստուած գովեն՝ եկեղեցիին վրայ իր ունեցած սիրոյն համար, 5 և ան իշխանութեանը համար՝ որն որ ինքը եկեղեցիին տուաւ։

ա Սաղ. լգ. 3։ Ես. խբ. 10։
բ Տես Յոբ. լե. 10։ Սաղ. ճ. 3։ Ես. ծդ. 5։
գ Զաք. թ. 9։ Մատ. իա. 5։
դ Սաղ. ձա. 2։ ճծ. 4։
ե Սաղ. լե. 27։
զ Սաղ. ճլբ. 16։
է Յոբ. լե. 10։
ը Եբր. դ. 12։ Յայտ. ա. 16։

1 Ալէլուիա։ [ա]Տէրոջը նոր երգ երգեցէք. [ա]անոր օրհնութիւնը սուրբերուն ժողովքին մէջը։
2 Իսրայէլը թող ուրախանայ [բ]իր Ստեղծողին վրայ. Սիօնի որդիքը թող ցնծան իրենց [գ]Թագաւորին վրայ։
3 [դ]Թող անոր անունը պարով օրհնեն. թմբուկով ու քնարով սաղմոս թող ըսեն անոր։
4 Ինչու որ [ե]Տէրը իր ժողովուրդին կը հաւնի. [զ]խոնարհները փրկութիւնով պիտի փառաւորէ։
5 Թող սուրբերը ուրախանան փառքով, [է]իրենց անկողիններուն մէջը ցնծան։
6 Աստուծոյ գովութիւնները անոնց բերնին մէ՛ջը թող ըլլայ, ու [ը]երկու բերնով սուր՝ անոնց ձեռքին մէ՛ջը,
7 Որ հեթանոսներէն վրէժ առնեն, [ը]ժողովուրդները պատժեն,
8 Որ անոնց թագաւորները շղթաներով կապեն, ու անոնց ազնուականները երկաթէ կապանքներով,
9 [թ]Որ գրուած դատաստանը անոնց վրայ կատարեն. [ժ]ասիկա անոր բոլոր սուրբերուն փառքն է։ Ալէլուիա։

թ Բ Օր. է. 1, 2։
ժ Սաղ. ճխը. 14։

## ՍԱՂՄ. ՃԾ

1 Յորդորակ զԱստուած գովելու ամէն տեսակ նուագարաններով։

ա Սաղ. ճխե. 5, 6։
բ Բ Օր. գ. 24։
գ Սաղ. ձա. 2։ ճխթ. 3։
դ Ել. ժե. 20։
ե Սաղ. լգ. 2։ ղբ. 3։ ճխդ. 9։ Ես. լը. 20։
զ Ա Մն. ժե. 16, 19, 28։ ժզ. 5։ իե. 1, 6։

1 Ալէլուիա։ Օրհնեցէ՛ք զԱստուած իր սրբարանին մէջ. օրհնեցէ՛ք անիկայ իր զօրութեանը հաստատութեանը մէջ։
2 [ա]Օրհնեցէ՛ք անիկայ իր զօրաւոր գործքերուն համար. օրհնեցէ՛ք անիկայ իր [բ]մեծափառութեանը համեմատ։
3 Օրհնեցէ՛ք անիկայ փողի ձայնով. [գ]օրհնեցէ՛ք անիկայ տաւիղով ու քնարով։
4 Օրհնեցէ՛ք անիկայ [դ]թմբուկով ու պարով. օրհնեցէ՛ք անիկայ [ե]լար ունեցող նուագարաններով ու սրինգով։
5 Օրհնեցէ՛ք անիկայ [զ]մեծաձայն ծնծղաներով. օրհնեցէ՛ք անիկայ ցնծութեան ծնծղաներով։
6 Ամէն շունչ ունեցողը թող Տէրը օրհնէ։ Ալէլուիա։

# ԳԻՐՔ ԱՌԱԿԱՑ

## ԳԼՈՒԽ Ա

Ն. Ք. ՉՔ. ԻՐՐ 1000

1 Առակաց օգուտը։ 7 Աստուծմէ վախնալու, ու իր խօսքին հաւատալու համար յորդորանք մը։ 10 Մեղաւորներուն հրապուրանքներէն փախչելու պատուէր։ 20 Իմաստութիւնը իր քամահրուելուն համար կը գանգատի. 24 զինքը քամահրողներուն սպառնալիքներ կ'ընէ։

ա Գ Թագ. դ. 32։ Գլ. ժ. 1։ իե. 1։ Ժող. ժբ. 9։
բ Գլ. բ. 1, 9։
գ Գլ. թ. 4։
դ Գլ. թ. 9։

1 Իսրայէլի թագաւորին Դաւիթի որդւոյն [ա]Սողոմոնին առակները.
2 Իմաստութիւնը ու խրատը գիտնալու համար, հանճարին խօսքերը հասկընալու համար.
3 [բ]Իմաստութեան կրթութիւնը ընդունելու համար, [*]արդարութիւնը, դատաստանը և ուղղութիւնը.
4 [գ]Միամիտներուն արամտութիւն տալու համար, [*]երիտասարդներուն գիտութիւն և հանճար։
5 [դ]Իմաստունը թող լսէ, ու իր իմաստութիւնը աւելցընէ, ու հանճարեղ մարդը խոհեմութիւն ստանայ,
6 Առակը ու *նմանութիւնը հասկընալու համար, նաև իմաստուններուն խօսքերը, ու անոնց [ե]խրթնաբանութիւնները։
7 [զ]Իմաստութեան սկիզբը Տէրոջը վախն է, [*]բայց յիմարները իմաստութիւնը ու կրթութիւնը կ'անարգեն։
8 Որդեակ իմ՝ [է]քու հօրդ խրատը մտիկ ըրէ, ու քու մօրդ †օրէնքը մի՛ մերժեր.
9 Քանզի [ը]անոնք քու գլուխդ՝ շնորհաց պսակ, և քու պարանոցդ՝ մանեակներ պիտի ըլլան։
10 Որդեակ իմ՝ թէ որ մեղաւորները քեզ գլխէ հանել ուզեն, [թ]դուն [*]անոնց հաւանութիւն մի՛ տար։
11 Թէ որ ըսեն. Մեզի հետ եկուր, [ժ]արեան համար դարանամուտ ըլլանք, անմեղ մարդուն համար ա-

* կամ՝ մեկնութիւնը
ե Սաղ. հբ. 2։
զ Յոբ. իը. 28։ Սաղ. ճժա. 10։ Գլ. թ. 10։ Ժող. ժբ. 13։
է Գլ. դ. 1։ զ. 20։
† Եբ՝ վարժութիւնը
ը Գլ. դ. 22։
թ Ծն. լթ. 7, 10։ Սաղ. ա. 1։ Եփե. ե. 11։
ժ Երեմ. ե. 26։

Ն. Ք. ԳՔ.
Իբր 1000

ռանց պատճառի ծածուկ տեղ ըսպասենք.
12 Զանոնք գերեզմանի պէս ողջ ողջ՝ և է գուբը իջնողներուն պէս ամբողջ կլլենք.
13 Ամէն տեսակ պատուական ստացուածք գտնենք, ու մեր տուները աւարով լեցընենք.
14 Քու վիճակդ մեր մէ՛ջը ձգէ. ամէնքս մէկ քսակ ունենանք.
15 Որդեակ իմ՝ ը անոնց հետ ճամբայ մի՛ երթար. թ անոնց շաւիղէն քու ոտքերդ ե՛տ պահէ.
16 ժ Քանզի անոնց ոտքերը չարութեան կը վազեն, և արիւն թափելու կ'արտորան։
17 Յիրաւի ամէն թռչունին աչքերուն առջևը պարապ տեղը վարմեր կը լարուի.
18 Բայց անոնք իրենց արեանը համար դարան կը գործեն, ու իրենց կենացը համար ծածուկ տեղ կը սպասեն։
19 ի Ամէն ագահին ճամբաները ասանկ են. ագահութիւնը՝ իրեն անձնատէր եղողները կը մեռցնէ։
20 լ Իմաստութիւնը դուրսը բարձրաձայն կ'աղաղակէ, ու հրապարակներու մէջ իր ձայնը կու տայ։
21 Անիկայ բազմութիւն եղած տեղերուն գլուխը՝ և դրանց մուտքերուն մէջ կ'աղաղակէ, ու քաղաքին մէջ իր խօսքերը կը խօսի, ու կ'ըսէ.
22 Ո՛վ անմիտներ՝ մինչև ե՞րբ անմտութիւնը պիտի սիրէք. մինչև ե՞րբ ծաղր ընողները ծաղր ընելով պիտի զուարճանան, ու յիմարները գիտութիւնը ատեն։
23 Իմ յանդիմանութեանս դարձէք. ահա՛ խ իմ հոգիս ձեր վրայ պիտի թափեմ. իմ խօսքերս ձեզի պիտի հասկըցընեմ։
24 ծ Որովհետև ես կանչեցի, ու դուք չուզեցիք լսել. ձեռքս երկնցուցի, ու մտիկ ընող չեղաւ.
25 Հապա կ իմ բոլոր խրատներս մերժեցիք, և իմ յանդիմանութիւնս չուզեցիք.
26 հ Ես ալ ձեր թշուառութեանը վրայ պիտի ծիծաղիմ, ու ձեր վախը հասնելուն, ծաղր պիտի ընեմ.
27 ձ Երբոր ձեր վախը հեղեղի պէս հասնի, ձեր թշուառութիւնը մրրիկի պէս պատահի, և ձեր վրայ նեղութիւն ու տառապանք գայ,
28 ղ Ան ատենը ինծի պիտի աղաղակեն, ու պատասխան պիտի չտամ. զիս պիտի փնտռեն, ու պիտի չկրնան գտնել.
29 Որովհետև ճ գիտութիւնը ատեցին, ու մ Տէրոջը վախը չընտրեցին.
30 յ Իմ խրատներս չուզեցին. ու բոլոր յանդիմանութիւնս անարգեցին.
31 ն Ուրեմն անոնք իրենց ճամբուն պտուղէն պիտի ուտեն, ու իրենց խորհուրդներէն պիտի կշտանան։
32 Վասն զի անմիտներուն խոտորիլը զիրենք պիտի մեռցընէ, և յիմարներուն * անհոգութիւնը զիրենք պիտի կորսնցընէ։
33 շ Բայց ինծի մտիկ ընողը ապահովութեամբ պիտի բնակի, ու ո չարիքներու վախէն հանդարտ պիտի ըլլայ։

է Սաղ. ԻԸ. 1։ Ճխք. 7։
ը Սաղ. Ա. 1։ Գլ. Դ. 14։
թ Սաղ. ՃԺԹ. 101։
ժ Ես. ԾԹ. 7։ Հռով. Գ. 15։
ի Գլ. ԺԵ. 27։ Ա Տիմ. Զ. 10։
լ Գլ. Ը. 1, Ժ։ Թ. 3։ Յով. Է. 37։
խ Յովէլ. Բ. 28։
ծ Ես. ԿԵ. 12։ ԿԶ. 4։ Երեմ. Է. 13։ Զաք. Է. 11։
կ Սաղ. ՃԷ. 11։ Հմր 30։ Ղուկ. Է. 30։
հ Սաղ. Բ. 4։
ձ Գլ. Ժ. 24։
ղ Յոբ. ԻԷ. 9։ ԼԵ. 12։ Ես. Ա. 15։ Երեմ. ԺԱ. 11։ ԺԴ. 12։ Եզեկ. Ը. 18։ Միք. Գ. 4։ Զաք. Է. 13։ Յակ. Դ. 3։
ճ Յոբ. ԻԱ. 14։ Հմր 22։
մ Սաղ. ՃԺԹ. 173։
յ Հմր 25։ Սաղ. ՁԱ. 11։
ն Յոբ. Դ. 8։ Գլ. ԺԴ. 14։ ԻԲ. 8։ Ես. Գ. 11։ Երեմ. Զ. 19։
* Կամ՝ յաջողութիւնը
շ Սաղ. ԻԵ. 12, 13։
ո Սաղ. ՃԺԲ. 7։

## ԳԼ. Բ

1 Իմաստութիւնը կը խոստանայ իր որդւոցը՝ բարեպաշտութիւն, 10 և դէշ ընկերներէ ապահովութիւն, 20 ու շիտակ ճամբաներու մէջ առաջնորդութիւն։

1 Որդեակ իմ՝ թէ որ իմ խօսքերս ընդունիս, ու չ իմ պատուիրանքներս քովդ պահես,
2 Այնպէս որ՝ ականջդ իմաստութեան տաս, ու սիրտդ հանճարին բանաս,
3 Թէ որ դուն իմաստութիւնը ձայն կանչես, և քու ձայնդ հանճարին ուղղես,
4 պ Թէ որ զանիկայ արծաթի պէս փնտռես, ու ծածուկ գանձերու պէս խնդրես,
5 Ան ատենը Տէրոջը վախը պիտի հասկընաս, և Աստուծոյ գիտութիւնը պիտի գտնես.
6 ջ Վասն զի իմաստութիւնը Տէրը կու տայ. գիտութիւնը ու հանճարը անոր բերնէն է։
7 Անիկայ ուղիղներուն համար † փրկութիւն կը պահէ. ռ անիկայ ուղղութեամբ քալողներուն վահանն է,
8 Որ արդարութեան ճամբաները պահպանէ, ու ս իր սուրբերուն ճամբան պահէ։
9 Ան ատենը արդարութիւնը, դատաստանը և ուղղութիւնը, ամէն աղէկ ճամբան պիտի հասկընաս։
10 Երբոր իմաստութիւնը քու սրտիդ մէջը մտնէ, և գիտութիւնը քու հոգւոյդ ախորժելի ըլլայ,
11 Խոհեմութիւնը քեզ պիտի պահէ, ու վ հանճարը քեզ պիտի պահպանէ,
12 Որ քեզ չար մարդուն ճամբայէն, նենգութիւններ խօսող մարդէն ազատէ.
13 Անոնցմէ՝ որ ուղիղ ճամբան թողուցեր են, ու տ խաւար ճամբաներու մէջ կը քալեն.
14 ր Չարութիւն ընելով կ'ուրախանան, և ց չարին նենգութիւններովը կը ցնծան.
15 ւ Որոնց ճամբաները ծուռ են, ու անոնց ընթացքը խոտորնակ է։

Ն. Ք. ԳՔ.
Իբր 1000

չ Գլ. Դ. 21։ Է. 1։
պ Գլ. Գ. 14։ Մատ. ԺԳ. 44։
ջ Գ Թագ. Գ. 9, 12։ Յակ. Ա. 5։
† Կամ՝ իմաստութիւն
ռ Սաղ. ՁԴ. 11։ Գլ. Լ. 5։
ս Ա Թագ. Բ. 9։ Սաղ. ԿԶ. 9։
վ Գլ. Զ. 22։
տ Յոհ. Գ. 19, 20։
ր Գլ. Ժ. 23։ Երեմ. ԺԱ. 15։
ց Հռով. Ա. 32։
ւ Սաղ. ՃԻԵ. 5։

Ն․ Ք․ ՂՔ․ Իրր 1000

Գլ․ ե․ 20։ Գլ․ ե․ 3։ զ․ 24։ է․ 5։ Տես Մաղ․ բ․ 14, 15։ Գլ․ է․ 27։ Սաղ․ լէ․ 29։ Յոբ․ իը․ 17։ Սաղ․ լէ․ 28։ ճդ․ 35։

16 Որ քեզ ազատէ օտար կնիկէն, շողոքորթութիւն խօսող օտար կնիկէն.
17 Ան որ իր երիտասարդութեան բարեկամը կը թողու, և իր Աստուծոյն ուխտը կը մոռնայ.
18 Քանզի անոր տունը մահուան կը տանի, ու անոր շաւիղները մեռելներուն։
19 Անոր գացողները բնաւ չեն դառնար, և կենաց ճամբաներուն չեն հասնիր։
20 Որպէս զի բարի մարդոց ճամբան երթաս, ու արդարներուն շաւիղները պահես։
21 Քանզի ուղիղները երկրի վրայ պիտի բնակին, և կատարեալները անոր մէջը պիտի մնան։
22 Բայց ամբարիշտները երկրէն պիտի կորսուին, ու անօրէնները անկէ պիտի փրցուին։

## ԳԼ․ Գ

1 Հնազանդութեան, 5 հաւատքի, 7 խոնարհութեան, 9 բարեպաշտութեան, 11 և համբերութեան յորդորանք մը։ 13 Իմաստութեան երջանիկ օգուտը։ 19 Իմաստութեան գործքերը, 21 ու շահը։ 27 Ողորմած, 30 խաղաղարար, 31 և գոհ ըլլալու յորդորանք մը։ 33 Չարերուն անիծեալ վիճակը։

1 Որդեակ իմ՝ մի՛ մոռնար իմ օրէնքս, հապա քու սիրտդ
թող իմ պատուիրանքներս պահէ.
2 Ինչու որ քեզի երկայն օրեր, ու կենդանութեան տարիներ, և խաղաղութիւն պիտի աւելցընեն։
3 Ողորմութիւնը ու ճշմարտութիւնը քեզ չթողուն. զանոնք քու պարանոցիդ վրայ կապէ. քու սրտիդ տախտակին վրայ գրէ զանոնք։
4 Այսպէս Աստուծոյ և մարդոց առջեւ՝ շնորհք ու բարի համարում պիտի գտնես։
5 Քու բոլոր սրտովդ Տէրոջը ապաւինէ, և քու իմաստութեանդ մի՛ վստահիր։
6 Քու ամէն ճամբաներուդ մէջ զանիկայ ճանչցիր. ու անիկայ քու շաւիղներդ պիտի ուղղէ։
7 Դուն քու աչքիդ առջեւ իմաստուն մի՛ ըլլար. Տէրոջմէ վախցիր, ու չարութենէ ետ քաշուէ։
8 Ասիկայ քու *ջիղերուդ առողջութիւն, և քու ոսկորներուդ պարարտութիւն կ'ըլլայ։
9 Տէրոջը պատիւ ըրէ քու ստացուածքէդ, և քու բոլոր բերքերուդ երախայրիներէն.
10 Եւ քու շտեմարաններդ առատութեամբ պիտի լեցուին, ու հնձաններէդ նոր գինին դուրս պիտի թափի։
11 Որդեակ իմ՝ Տէրոջը խրատը մի՛ անարգեր, ու անոր յանդիմանութենէն մի՛ թուլնար։
12 Վասն զի Տէրը իր սիրածը կը խրատէ, ինչպէս որ հայր մը իր սիրական զաւակին կ'ընէ։
13 Երանի՜ այն մարդուն որ իմաստութիւն կը գտնէ, ու այն մարդուն՝ որ հանճար կը ստանայ.
14 Վասն զի անոր շահը արծաթի շահէն աղէկ է, ու անոր արդիւնքը մաքուր ոսկիէն։
15 Անիկայ †գոհարներէն պատուական է. և քու բոլոր ցանկալի բաներդ չեն կրնար անոր հաւասարիլ։
16 Անոր աջ ձեռքին մէջ՝ օրերու երկայնութիւն, և ձախ ձեռքին մէջ՝ հարստութիւն ու փառք կայ։
17 Անոր ճամբաները հաճոյական ճամբաներ են, և անոր բոլոր շաւիղները խաղաղութիւն են։
18 Անիկայ իրեն յարողներուն կենաց ծառ է. ու զինքը բռնողները երջանիկ կ'ըլլան։
19 Տէրը իմաստութեամբ հիմնեց երկիրը, և հանճարով հաստատեց երկինքը։
20 Անոր գիտութեամբը անդունդները կը պատռին, ու ամպերը ցօղ կը կաթեցընեն։
21 Որդեակ իմ՝ ասոնք քու աչքերուդ առջեւէն չերթան. իմաստութիւնը ու խոհեմութիւնը խո՛ւ պահէ.
22 Եւ քու հոգւոյդ կեանք՝ ու քու պարանոցիդ ‡զարդ ըլլան։
23 Այն ատենը ճամբադ ապահովութեամբ պիտի քալես, և քու ոտքդ պիտի չսահի։
24 Եթէ որ պառկիս՝ պիտի չվախնաս, ու թէ որ քնանաս՝ քունդ անուշ պիտի ըլլայ։
25 Պիտի չվախնաս յանկարծահաս վախէն, ո՛չ ալ ամբարիշտներուն ‖կործանումէն՝ երբոր գայ.
26 Վասն զի քու յոյսդ Տէրը պիտի ըլլայ, և քու ոտքդ պիտի պահէ, որ չբռնուի։
27 Երբոր ձեռքէդ աղէկութիւն ընել կու գայ, §կարօտ եղողէն՝ մի՛ արգիլեր զանիկայ։
28 Քու դրացիիդ բնաւ մի՛ ըսեր, Գնա՝ ու ետքը եկուր, կամ վաղը կու տամ, երբոր քու քովդ կայ։
29 Քու դրացիիդ դէմ չարութիւն մի՛ մտածեր, քանի որ անիկայ վստահութեամբ քեզի հետ կը բնակի։
30 Առանց պատճառի՝ մարդու հետ մի՛ վիճիր, երբոր անիկայ քեզի չարութիւն մը ըրած չէ։
31 Բռնաւոր մարդուն մի՛ նախանձիր, ու անոր ճամբաները բնաւ մի՛ ընտրեր.

Ն․ Ք․ ՂՔ․ Իրր 1000

բ Օր․ ը․ 5։ Գլ․ ը․ 34, 35։ Յոբ․ իը․ 13, ... Սաղ․ ժթ․ 10։ Գլ․ բ․ 4։ ը․ 11, 19։ ժզ․ 16։ † Կամ՝ բուստերէն Մատ․ ժգ․ 44։ Գլ․ ը․ 18։ ա Տիմ․ դ․ 8։ Մատ․ ժա․ 29, 30։ Ծն․ բ․ 9։ գ․ 22։ Սաղ․ ճդ․ 24։ ճլզ․ 5։ Գլ․ ը․ 27։ Երեմ․ ժ․ 12։ ծա․ 15։ բ Օր․ լգ․ 28։ Յոբ․ լզ․ 28։ Գլ․ ա․ 9։ ‡ Եբր․ շնորհք Սաղ․ լէ․ 24։ ղա․ 11, 12։ Գլ․ ժ․ 9։ Ղեւ․ իզ․ 6։ Սաղ․ գ․ 5։ դ․ 8։ Սաղ․ ղա․ 5։ ճժբ․ 7։ ‖ Կամ՝ արշաւանքէն՝ Հռով․ ժգ․ 7։ Գաղ․ զ․ 10։ § Եբր․ անոր տէրերէն Ղեւ․ ժթ․ 13։ բ Օր․ իդ․ 15։ Հռով․ ժբ․ 18։ Սաղ․ լէ․ 1։ Հգ․ 8։ Գլ․ իդ․ 1։

բ Օր․ ը․ 1։ ե․ 16, 20։ Սաղ․ ճժթ․ 165։ Ել․ ժգ․ 9։ բ Օր․ զ․ 8։ Գլ․ զ․ 21։ է․ 3։ Երեմ․ ժէ․ 1։ բ Կոր․ գ․ 8։ Տես ա Թագ․ բ․ 26։ Ղու․ բ․ 52։ Գոր․ բ․ 47։ Հռով․ ժդ․ 18։ Սաղ․ լէ․ 3, 5։ Երեմ․ Թ․ 23։ Մն․ իը․ 9։ Երեմ․ Ժ․ 23։ Հռով․ ժբ․ 16։ Յոբ․ ա․ 1։ Գլ․ ժզ․ 6։ * Կամ՝ պորտիդ Յոբ․ իա․ 24։ Ել․ իբ․ 29։ իգ․ 19։ լդ․ 26։ բ Օր․ իզ․ 2, ... Մաղ․ գ․ 10, ... Ղու․ ժդ․ 13։ բ Օր․ իը․ 8։ Յոբ․ ե․ 17։ Սաղ․ ղդ․ 12։ Եբր․ ժբ․ 5, 6։ Յայտ․ գ․ 19։

Ն․ ք․ զՔ․ իբր 1000

ց Սաղ․ իե․ 14։
ա Ղև․ իզ․ 14, ա։ Սաղ․ լէ․ 22։ Զաք․ ե․ 4։ Մաղ․ բ․ 2։
ե Սաղ․ ա․ 8։
բ Յակ․ դ․ 6։ Ա Պետ․ ե․ 5։

32 Վասն զի ծուռ մարդը Տէրոջը առջևը պիղծ է․ ցբայց Անոր ընտանութիւնը արդարոց հետ է։
33 ա Ամբարիշտ մարդուն տանը մէջ՝ Տէրոջը անէծքը կայ․ բայց ե արդարներուն բնակարանը Անիկայ կ'օրհնէ։
34 բ Ցիրաւի անիկայ ծաղր ընողները ծաղր կ'ընէ, բայց խոնարհներուն շնորհք կու տայ։
35 Իմաստուններրը փառք պիտի ժառանգեն․ բայց յիմարներուն բարձրանալը անարգանք պիտի ըլլայ։

## ԳԼ․ Դ

1 Սողոմոն մարդիկը հնազանդութեան համոզելու համար, 3 կը ցուցընէ թէ ի՛նչ կրթութիւն առեր է ինքը իր ծնողքէն, 5 իմաստութիւն սորվելու համար, 14 ու չարերուն ճամբայէն փախչելու համար։ 20 Հաւատքի, 23 և սրբութեան յորդորանք մը։

ա Սաղ․ լդ․ 11։ Գլ․ ա․ 8։
բ Ա Մն․ իթ․ Ա։
գ Ա Մն․ իբ․ 9։ Եփե․ զ․ 4։
դ Գլ․ է․ 2։
ե Գլ․ բ․ 2, 3։
զ Բ Թես․ բ․ 10։
է Մատ․ ժգ․ 44։ Ղու․ ժ․ 42։
ը Ա Թագ․ բ․ 30։
թ Գլ․ ա․ 9։ գ․ 22։
ժ Գլ․ գ․ 2։
ի Սաղ․ ժը․ 36։
լ Սաղ․ ղա․ 11, 12։

1 ա Որդիք՝ Հօր հօրը խրատը լսեցէ՛ք, ու մտիկ ըրէ՛ք՝ որ իմաստութիւնը ճանչնաք։
2 Վասն զի ձեզի աղէկ կրթութիւն կու տամ․ իմ օրէնքս մի՛ թողուք։
3 Քանզի ես իմ հօրս տղան էի, բ փափուկ ու սիրելի՝ իմ մօրս առջևը։
4 գ Անիկայ ինծի կը սորվեցընէր, ու կ'ըսէր․ քու սիրտդ իմ խօսքերս թող բռնէ՛․ դ իմ պատուիրանքներս պահէ՛, ու ապրէ՛։
5 ե Իմաստութիւն ստացի՛ր, խոհեմութիւն ստացի՛ր․ մի՛ մոռնար, ու իմ բերնիս խօսքերէն մի՛ խոտորիր․
6 Զանիկայ մի՛ թողուր, ու անիկայ քեզ պիտի պահէ․ զ զանիկայ սիրէ՛, ու անիկայ քեզ պիտի պաշտպանէ։
7 է Ամէն բանէն գլուխը իմաստութիւնն է․ իմաստութիւն ստացի՛ր․ ու ամէն ստացած բաներուդ հետ խոհեմութիւն ստացի՛ր։
8 ը Զանիկայ մեծարէ՛, ու անիկայ քեզ պիտի բարձրացընէ․ թէ որ զանիկայ գրկես, քեզ պիտի պատուէ։
9 Անիկայ քու գլխուդ թ շնորհաց զարդ պիտի տայ․ քեզի փառաց պսակ պիտի պարգևէ։
10 Մտի՛կ ըրէ՛ որդեակ իմ, ու իմ խօսքերս ընդունէ՛․ ժ և քու կենացդ տարիները պիտի շատնան։
11 Քեզի իմաստութեան ճամբուն մէջ ի խելք սորվեցուցի․ քեզ ուղղութեան շաւիղներուն մէջ պտըտցուցի․
12 Որ քալելու ատենդ՝ լ ոտքիդ քայլերը չնեղնան, և ու վազելու ատենդ չսահիս։

13 Ամո՛ւր բռնէ խրատը, ու բնաւ մի՛ թողուր․ զանիկայ պահէ՛․ վասն զի քու կեանքդ անիկայ է։
14 ի Ամբարիշտներուն ճամբան մի՛ երթար, ու չարերուն ճամբուն մէջ մի՛ քալեր։
15 Անկէ զգուշացի՛ր․ անոր քովէն մի՛ անցնիր․ անկէ խոտորէ՛, ու անցի՛ր։
16 ծ Վասն զի անոնք մինչև որ չարութիւն չընեն, չեն քնանար․ ու թէ որ մէկը չկործանեն, քուներնին կը փախչի։
17 Քանզի անոնք ամբարշտութեան հացը կ'ուտեն, ու անիրաւութեան գինին կը խմեն։
18 կ Բայց արդարներուն ճամբան՝ հ ծագող լոյսին պէս է, որ երթալով կը լուսաւորուի, մինչև որ կատարեալ օր ըլլայ։
19 ձ Ամբարիշտներուն ճամբան խաւարի պէս է, ու չեն գիտեր թէ ինչ բանով իրենց ոտքը պիտի սահի։
20 Որդեակ իմ՝ մտի՛կ ըրէ իմ խօսքերս․ քու ականջներդ իմ խօսքերուս տուր։
21 ղ Անոնք քու աչքերուդ առջևէն չերթան․ ճ զանոնք քու սրտիդ մէջը պահէ․
22 Վասն զի զանոնք գտնողներուն՝ անոնք կեանք են, և մ անոնց բոլոր մարմնոյն՝ բժշկութիւն։
23 Ամէն զգուշութիւնով քու սիրտդ պահէ՛․ քանզի կենաց * աղբիւրները անկէ են։
24 Ծուռ բերանը քեզմէ մէկդի՛ ըրէ, ու անիրաւ շրթունքները քեզմէ հեռացո՛ւր։
25 Քու աչքերդ ուղիղ նային, ու արտևանունքներդ շիտակ դէպ 'ի առջևդ ըլլան։
26 Ոտքերուդ շաւիղները շիտկէ՛, և քու բոլոր ճամբաներդ հաստատուին։
27 յ Աջ կամ ձախ կողմը մի՛ խոտորիր․ ն ոտքդ չարութենէ զարձո՛ւր։

## ԳԼ․ Ե

1 Սողոմոն կը յորդորէ մարդիկը իմաստութիւն սորվելու․ 3 պոռնկութեան ու անառակութեան վնասը կը ցուցընէ․ 15 կը պատուիրէ գոհ, առատաձեռն ու պարկեշտ ըլլալ․ 22 կ'իմացընէ թէ չարը իր մեղքերովը պիտի բռնուի։

1 Որդեակ իմ՝ մտի՛կ ըրէ իմ իմաստութեանս, և քու ականջդ իմ հանճարիս տուր,
2 Որ խոհեմութիւն պահես, ու քու շրթունքներդ ա գիտութիւն պահեն։
3 բ Վասն զի օտար կնկան շրթունքներէն խորիսխի մեղր կը կա–

Ն․ ք․ զՔ․ իբր 1000

ի Սաղ․ ա․ 1։ Գլ․ ա․ 10, 15։
ծ Սաղ․ լզ․ 4։ Եսա․ ծէ․ 20։
կ Մատ․ ե․ 14, 45։ Փիլ․ բ․ 15։
հ Բ Թագ․ իգ․ 4։
ձ Ա Թագ․ բ․ 9։ Յոբ․ ժը․ 5, 6։ Եսա․ ծթ․ 9, 10։ Երեմ․ իգ․ 12։ Յով․ ժբ․ 35։
ղ Գլ․ գ․ 8, 21։
ճ Գլ․ բ․ 1։
մ Գլ․ գ․ 8։ ժբ․ 18։
* Եբր․ ելքը
յ Բ Օր․ ե․ 32։ Իբ․ 14։ Յես․ ա․ 7։
ն Եսա․ ա․ 16։ Հռով․ ժբ․ 9։
ա Մաղ․ բ․ 7։
բ Գլ․ բ․ 16։ Զ․ 24։

Ն. Ք. Գ. Ք. իբր 1000

թի, և անոր քիմքը իւղէն կակուղ է.

Սաղ. ԾԵ. 21։ Ժող. Է. 26։ Եբր. Դ. 12։ Գլ. Է. 27։

4 Բայց անոր վախճանը օշինդրի պէս դառն, երկսայրի սուրի պէս սրած է։

5 Անոր ոտքերը մահուան կ'իջնեն, ու անոր քայլերը դժոխքը կը հասնին։

6 Անոր ճամբաները փոփոխական են, ու չես կրնար զանոնք գիտնալ, որ չըլլայ թէ կենաց ճամբան մտածես։

7 Եւ հիմա ո՛վ որդիք՝ ինծի մտիկ ըրէք, ու իմ բերնիս խօսքերէն մի՛ խոտորիք։

8 Ան կնիկէն ճամբադ հեռացուր, ու անոր տանը դրանը մի՛ մօտենար.

9 Չըլլայ որ քու փառքդ ուրիշներու, և տարիներդ անողորմ մարդու տաս.

10 Չըլլայ որ օտարները քու զօրութենէդ կշտանան, ու քու վաստակդ օտարներուն տունը մնայ.

11 Եւ քու վերջին ատենդ հառաչես, երբոր քու մարմինդ ու անդամներդ մաշին,

Գլ. Ա. 29։ Գլ. Ա. 25։ ԺԲ. 1։

12 Ու ըսես. Ես ինչպէս խրատը ատեցի, ու իմ սիրտս յանդիմանութիւնը անարգեց.

13 Եւ իմ ուսուցիչներուս խօսքը մտիկ չըրի, ու իմ ականջս զիս վարժողներուն չտուի.

14 Ժողովքի ու ժողովուրդի մէջ գրեթէ ամէն տեսակ թշուառութեան հանդիպեցայ։

15 Դուն քու ջրակոյտէդ ջուր խմէ, և քու ջրհորիդ մէջը վազող ջուրէն։

16 Քու աղբիւրներդ դուրսը տարածուին, ինչպէս ջուրերու վտակները հրապարակներուն մէջը։

17 Անոնք մինակ քուկդ ըլլան, ու չէ՛ թէ քուկդ և օտարներունը։

Մաղ. Բ. 14։

18 Քու աղբիւրդ օրհնեալ ըլլայ. և քու երիտասարդութեանդ կնկանը հետ ուրախ եղիր։

Տես Երգ. Բ. 9։ Դ. 5։ Է. 3։

19 Անիկայ սիրելի եղնիկի պէս, և շնորհալի այծեման պէս ըլլայ. ամէն ատեն անոր ստինքները քեզ կշտացընեն, ու միշտ անոր սիրովը զմայլիս։

Գլ. Բ. 16։ Է. 5։ Բ Մն. ԺԶ. 9։ Յոբ. ԼԱ. 4։ ԼԴ. 21։ Գլ. ԺԵ. 3։ Երեմ. ԺԶ. 17։ ԼԲ. 19։ Ովս. Է. 2։ Եբր. Դ. 13։ Սաղ. Թ. 15։ Յոբ. Դ. 21։ ԼԶ. 12։

20 Եւ ինչո՞ւ որդեակ իմ՝ դուն օտար կնկան մը սիրովը զմայլիս, ու օտար կնկան ծոցը գրկես։

21 Վասն զի մարդուն ճամբաները Տէրոջը աչքերուն առջևն են. ու անոր ամէն քայլերը ինք կը կշռէ։

22 Չարագործը իր անօրէնութիւնները պիտի բռնեն. ու անիկայ իր մեղքին չուաններովը պիտի բռնուի։

23 Անիկայ առանց խրատի պիտի մեռնի, ու իր մեծ յիմարութեամբը պիտի մոլորի։

Ն. Ք. Գ. Ք. իբր 1000

## ԳԼ. Զ

1 Երաշխաւորութեան, 6 ծուլութեան, 12 և անզգամութեան դէմ պատուէրներ։ 16 Աստուծոյ ատելի եղած եօթը բաներ։ 20 Հնազանդութեան օրհնութիւնները։ 25 Շնութեան վնասները։

Գլ. ԺԱ. 15։ ԺԷ. 18։ Ի. 16։ ԻԲ. 26։ ԻԷ. 13։

1 Որդեակ իմ՝ թէ որ քու բարեկամիդ համար երաշխաւոր եղար, կամ օտար մարդու համար քու ձեռքդ տուիր,

2 Քու բերնիդ խօսքերովը որոգայթը ինկար, բերնիդ խօսքերովը բռնուեցար։

3 Որդեակ իմ՝ շուտով ասանկ ըրէ որ ազատիս. որովհետև դուն քու բարեկամիդ ձեռքը մտար. գնա՛ քու բարեկամիդ խոնարհէ՛, ու զանիկայ թախանձէ՛։

Սաղ. ՃԼԲ. 4։

4 Աչքերուդ քուն ու արտևանունքներուդ նիրհում մի՛ տար.

5 Քեզ ազատէ՛ ինչպէս որ այծեամը որսորդին ձեռքէն, կամ թռչունը հաւորսին ձեռքէն կ'ազատի։

Յոբ. ԺԲ. 7։

6 Ո՛վ ծոյլ՝ մրջիւնին գնա. անոր ճամբաները տե՛ս, ու իմաստուն եղիր.

7 Վասն զի անիկայ ոչ իշխան, ոստիկան, կամ տիրող չունի,

8 Իր կերակուրը ամառուընէ կը պատրաստէ. իր ուտելիքը հունձքի ատեն կը ժողվէ։

Գլ. ԻԴ. 33, 34։

9 Ո՛վ ծոյլ՝ մինչև ե՞րբ կը պառկիս. քունէդ ե՞րբ պիտի արթըննաս։

10 Քիչ մը քնանաս, քիչ մը նիրհես, ու քիչ մը ձեռք ձեռքի վրայ դնես ննջելու համար.

Գլ. Ժ. 4։ ԺԳ. 4։ Ի. 4։

11 Ան ատենը քու աղքատութիւնդ ճամբորդի պէս պիտի գայ, ու կարօտութիւնդ սպառազինեալ մարդու պէս։

12 Անօրէն ու չար մարդը ծուռ բերնով կը շարժի.

Յոբ. ԺԵ. 12։ Սաղ. ԼԵ. 19։ Գլ. Ժ. 10։

13 Անիկայ իր աչքերովը ակնարկութիւն կ'ընէ, ոտքերովը կը խօսի, ու մատներովը բան կը սորվեցընէ.

Միք. Բ. 1։ Համր 19։

14 Անոր սրտին մէջը ծռութիւն կայ, միշտ չարութիւն կը հնարէ, ու կռիւներ կը հանէ։

Երեմ. ԺԹ. 11։ Բ Մն. ԼԶ. 16։

15 Ասոր համար անոր կորուստը յանկարծ պիտի գայ. անիկայ յանկարծ պիտի կոտրուի, ու անոր դարման պիտի չգտնուի։

16 Տէրը աս վեց բանէն կը զզուի, ու անոր հոգւոյն առջևը եօթը բան պիղծ է.

Սաղ. ԺԸ. 27։ ԾԱ. 5։ Սաղ. ՃԲ. 2, 3։ Ես. Ա. 15։

17 Ամբարտաւան աչքեր, ստախօս լեզու, և անմեղ արիւն թափող ձեռքեր,

18 ծ Չար խորհուրդներ հնարող սիրտ, չարութիւն ընելու համար շուտ վազող ոտքեր,
19 հ Ստութիւն խօսող անիրաւ վկայ, ու յ եղբարց մէջ կռիւներ ցանող մարդ։
20 ղ Որդեակ իմ՝ քու հօրդ պատուիրանքը պահէ՛, և քու մօրդ օրէնքը մի՛ մերժեր։
21 ճ Զանոնք միշտ քու սրտիդ վրայ կապէ. զանոնք քու պարանոցդ կախէ։
22 մ Քալած ատենդ անոնք քեզի առաջնորդութիւն ընեն, քնացած ատենդ յ քեզ պահպանեն, ու արթնցած ատենդ քեզի հետ խօսակցին։
23 ն Քանզի պատուիրանքը ճրագ, ու օրէնքը լոյս է, և խրատին յանդիմանութիւնները կենաց ճամբայ է.
24 շ Որ քեզ գէշ կնիկէն՝ օտար կընկան շողոքորթող լեզուէն պահէ։
25 ո Սրտիդ մէջը անոր գեղեցկութեանը մի՛ ցանկար. և քեզ իր արտեւանունքներովը չբռնէ։
26 Վասն զի չ պոռնիկ կնկան պատճառաւը մարդ մինչև պատառ մը հացի կարօտ կ'ըլլայ. պ Շնացող առնակինը ջ պատուական հոգին կ'որսայ։
27 Հնա՞ր է որ մէկը իր ծոցը կրակ դնէ, ու հանդերձները չայրին.
28 Հնա՞ր է որ մէկը կրակի կայծերու վրայ քալէ, ու անոր ոտքերը չայրին։
29 Ասոր պէս է իր դրացիին կնկանը քով գացողն ալ. ով որ անոր դպչի, անմեղ չըլլար։
30 Գողը թէ որ անօթութեան համար ու իր փորը կշտացընելու համար գողութիւն ընէ, չեն քամահեր զանիկայ։
31 Սակայն թէ որ գտնուի, ս եօթնպատիկ կը հատուցանէ. իր տանը բոլոր ինչքը կու տայ։
32 Կնկան հետ շնութիւն ընողին վ խելքը պակաս է. աս բանը ընողը իր հոգին կը կորսնցընէ։
33 Անիկայ վէրք ու անարգանք կը գտնէ, և անոր նախատինքը անջնջելի է։
34 Քանզի նախանձը՝ էրկանը կատաղութիւնն է. ու անիկայ վրէժխնդրութեան օրը՝ չխնայեր.
35 Անիկայ բնաւ մէկ փրկանքի մը չնայիր. կաշառք ալ շատցընելու ըլլաս, անիկայ չհաճիր։

Ն. Ք. ՋՔ. Իրր 1000

ծ Ծն. գ. 5։ Ես. ծթ. 7։ Հռով. գ. 15։
հ Սաղ. իե. 12։ Գլ. ժթ. 5, 9։
յ Հմր 14։
ղ Գլ. ա. 8։ Եփե. զ. 1։
ճ Գլ. գ. 3։ է. 3։
մ Գլ. գ. 23, 24։
յ Գլ. բ. 11։
ն Սաղ. ժթ. 8։ ճժթ. 105։
շ Գլ. բ. 16։ ե. 3։ է. 5։
ո Մատ. ե. 28։
չ Գլ. իթ. 3։
պ Ծն. լթ. 14։ Եզեկ. ժգ. 18։
ս Ել. իբ. 1, 4։
վ Գլ. է. 7։

## ԳԼ. Է

1 Սողոմոն կը յորդորէ մարդիկը որ իմաստութեան հետ հաւատարիմ ու քաղցր ընտանութիւն ունենան. 6 օրինակով մը կը ցուցընէ 10 պոռնիկին խորամանկութիւնը, 22 և անպարկեշտ երիտասարդին անմտութիւնը։ 24 Աս տեսակ չարութիւններէն կը զգուշացընէ մարդիկը։

1 Որդեակ իմ՝ պահէ իմ խօսքերս, ու ա իմ պատուիրանքներս քու քովդ ծածկէ՛։
2 բ Իմ պատուիրանքներս պահէ՛ որ ապրիս, գ ու իմ օրէնքիս քու աչքերուդ բիբին պէս նայէ։
3 դ Զանոնք մատներուդ վրայ կապէ. զանոնք սրտիդ տախտակին վրայ գրէ։
4 Իմաստութեան ըսէ՛. Դուն իմ քոյրս ես. ու խոհեմութեանը՝ ծանօթ կանչէ,
5 ե Որ քեզ օտար կնիկէն՝ շողոքորթութեամբ խօսող օտար կնիկէն պահեն։
6 Վասն զի իմ տանս պատուհանէն՝ իմ վանդակէս նայեցայ.
7 Եւ անմիտներուն մէջը տեսայ, երիտասարդներուն մէջը զ պակասամիտ պատանի մը գտայ,
8 Որ փողոցին մէջ ան կնոջը տանը անկիւնին քովէն կ'անցնէր, ու անոր տանը ճամբան բռնեց,
9 է Երբոր իրիկուն եղաւ, օրը տարաժամեցաւ, ու գիշերուան մութը տիրեց.
10 Եւ ահա անոր առջևը կնիկ մը ելաւ. անիկայ պոռնիկի կերպարանք՝ ու նենգաւոր սիրտ մը ունէր.
11 ը Անիկայ աղաղակող ու անզգամ էր, ու թ անոր ոտքերը իր տանը մէջ չէր կենար.
12 Երբեմն դուրսը, երբեմն հրապարակները, և ամէն անկիւնի քով դարանամուտ կ'ըլլար.
13 Զանիկայ բռնեց համբուրեց, ու լիրբ երեսով անոր ըսաւ.
14 Իմ քովս խաղաղութեան զոհեր կան. ես այսօր իմ ուխտերս կատարեցի.
15 Անոր համար ելայ քեզ դիմաւորելու, քու երեսդ փնտռելու, ու քեզ գտայ։
16 Իմ անկողինս ծածկոցներով զարդարեր եմ՝ ժ Եգիպտոսի ծաղկանկար բեհեզով.
17 Անկողինիս վրայ զմուռս, հալուէ ու կինամոն ցաներ եմ.
18 Եկո՛ւր մինչև առտու սիրով զուարճանանք, ու ցանկութիւններով զբօսնունք.
19 Վասն զի էրիկս տունը չէ, անիկայ հեռու ճամբայ գնաց.
20 Ստակին քսակը իր հետը առաւ, և *լուսնի լրման՝ օրը իր տունը պիտի դառնայ։
21 Այսպէս ի իր շատ խօսքերովը զանիկայ հրապուրեց, ու լ իր շրթունքներուն շողոքորթութիւնովը զանիկայ ստիպեց։
22 Ան ալ շիտակ՝ կնկանը ետևէն՝

Ն. Ք. ՋՔ. Իրր 1000

ա Գլ. բ. 1։
բ Ղև. ժը. 5։ Գլ. դ. 4։ Ես. ծե. 3։
գ Բ Օր. լբ. 10։
դ Բ Օր. զ. 8։ ժա. 18։ Գլ. գ. 3։ զ. 21։
ե Գլ. բ. 16։ ե. 3։ զ. 24։
զ Գլ. զ. 32։ թ. 4, 16։
է Յոբ. իդ. 15։
ը Գլ. թ. 13։
թ Ա Տիմ. ե. 13։ Տիտ. բ. 5։
ժ Ես. ժթ. 9։
* Կամ՝ տօնախմբութեան որոշուած
ի Գլ. ե. 3։
լ Սաղ. ժբ. 2։

Ն. ք. գ. Ք. իրր 1000

սպանդանոցը գացող արջառի պէս, պատժուելու գոյող կապուած յիմարի մը պէս կ'երթայ .

Է Ժող. Թ. 12.

23 Մինչեւ որ նետը անոր լեարդը ծակէ . Է ինչպէս որ թռչուն մը արտորալով դէպ 'ի ծուղակը կ'երթայ, ու չգիտեր որ անիկայ իր հոգւոյն համար լարուած է ։

24 Եւ հիմա ո՛վ որդիք՝ ինծի մտիկ ըրէք, ու իմ բերնիս խօսքերուն ականջ դրէք ։

25 Քու սիրտդ անոր ճամբաներուն չխոտորի, եւ անոր շաւիղներուն մէջը չմոլորիս .

Ֆ Նեեմ. Ժգ. 26.

26 Վասն զի անիկայ շատերը խոցոտեց ու կործանեց . ու Ֆ անոր բոլոր մեռցուցած մարդիկները զօրաւոր էին ։

Ձ Գլ. Բ. 18. Ե. 5. Թ. 18.

27 Ձ Անոր տունը դժոխքին ճամբաներն է . անոնք մահուան շտեմարանները կ'իջնեն ։

ԳԼ. Ը

1 Իմաստութեան համբաւը, 6 բացայայտութիւնը, 10 գերազանցութիւնը, 12 բնութիւնը, 15 զօրութիւնը, 18 ճոխութիւնը, 22 ու յաւիտենականութիւնը ։ 32 Իմաստութիւնը փափաքելի բան մըն է, քանզի անոր հետեւանքը երջանկութիւն է ։

ա Գլ. Ա. 20. Թ. 3.

1 Ա՛հա ա իմաստութիւնը կը կանչէ, ու խոհեմութիւնը իր ձայնը կու տայ ։

2 Անիկայ բարձր տեղերու գլուխ, ճամբու վրայ, ու շաւիղներու մէջ կը կայնի ։

3 Անիկայ դռներուն քովը՝ քաղաքներուն բերանը, ու դռներուն մուտքը աղաղակելով կ'ըսէ .

4 Ո՛վ մարդիկ՝ ձեզի կը կանչեմ . եւ իմ ձայնս մարդոց որդիներուն է ։

5 Ո՛վ տգէտներ՝ իմաստութիւն սորվեցէք . ո՛վ անմիտներ՝ իմացող սիրտ ունեցէք ։

բ Տես Գլ. ԻԲ. 20.

6 Լսեցէ՛ք, վասն զի բ ազնիւ բաներ պիտի խօսիմ, ու իմ շրթունքներս պիտի բանամ ուղիղ բաներ խօսելու համար ։

7 Քանզի իմ քիմքս ճշմարտութիւն պիտի խօսի . բայց իմ շրթունքս ամբարշտութենէ կը զզուի ։

8 Բերնիս բոլոր խօսքերը արդարութեամբ են, եւ անոնց մէջը խոտորնակ ու ծուռ բան չկայ ։

9 Ամէնն ալ հասկցողին ուղիղ են, ու գիտութիւն գտնողներուն շիտակ են ։

գ Յոբ. ԻԸ. 15. Սաղ. ԺԹ. 10. ՃԺԹ. 127. Գլ. Գ. 14, 15. Դ. 5, 7. Ժգ. 16.

10 Իմ խրատս առէք, եւ ո՛չ թէ արծաթ . ու ընտիր ոսկիէն աւելի գիտութիւնը ընտրեցէք ։

11 Գ Վասն զի իմաստութիւնը գոհարներէն աղէկ է . եւ բոլոր ցանկալի բաները չեն կրնար անոր հաւասարիլ ։

Ն. ք. գ. Ք. իրր 1000

12 Ես՝ իմաստութիւնս սրամտութեան հետ կը բնակիմ, եւ ճարտարութեանց գիտութիւնը կը գտնեմ ։

դ Գլ. Ժգ. 6. ե Գլ. Զ. 17. զ Գլ. Դ. 24.

13 Դ Տէրոջը վախը՝ չարութիւնը ատելն է . ես Ե հպարտութիւնը, ամբարտաւանութիւնը, չար ճամբան, ու Զ նենգաւոր բերանը կ'ատեմ .

է Ժող. Է. 19.

14 Խորհուրդը եւ խոհականութիւնը իմս է . ես եմ հանճարը՝ ու Է զօրութիւնը իմս է ։

ը Տես Դան. Բ. 21. Հռով. ԺԳ. 1.

15 Ը Թագաւորները ինծմով կը թագաւորեն . ու նախարարները ինծմով արդարութեան կանոններ կը դնեն ։

16 Ինծմով կ'իշխեն իշխանները, ազնուականները ու երկրիս բոլոր դատաւորները ։

թ Ա Թագ. Բ. 30. Սաղ. ՂԱ. 14. Յովհ. ԺԴ. 21. ժ Յակ. Ա. 5.

17 Թ Ես կը սիրեմ զիս սիրողները, եւ Ժ զիս կանուխ փնտռողները զիս կը գտնեն ։

18 Իմ քովս Ի հարստութիւն ու փառք, ընտիր ստացուածք, եւ արդարութիւն կայ ։

ի Գլ. Գ. 16. Մատ. Զ. 33. լ Գլ. Գ. 14. Հմր 10.

19 Լ Իմ պտուղս ոսկիէն՝ ու մաքուր ոսկիէն, եւ իմ արդիւնքս ընտիր արծաթէն աղէկ է ։

20 Ես արդարութեան ճամբուն մէջ, իրաւանց շաւիղներուն մէջ կը քալեմ,

* Կամ՝ Զիս սիրողներուն ժառանգութիւն տալու յօրդորինն ունիմ.

21 *Որ զիս սիրողներուն ստացուածք ժառանգեցընեմ" . ու անոնց գանձերը պիտի լեցընեմ ։

խ Գլ. Գ. 19. Յովհ. Ա. 1.

22 Խ Տէրը իր ճամբուն սկիզբը՝ իր վաղեմի գործքերէն առաջ զիս ստացեր էր ։

ծ Սաղ. Բ. 6. † Կամ՝ Հաստատուեցայ.

23 Ծ Ես յաւիտենէ՝ երկրիս սկիզբէն առաջ † օծուեցայ ։

24 Անդունդները չեղած՝ առատ ջուրերուն աղբիւրները չեղած՝ ես ծնած էի ։

կ Յոբ. ԺԵ. 7, 8.

25 Կ Լեռները չտեղաւորուած՝ բլուրներէն առաջ ես ծնած էի ։

‡ Կամ՝ բարձր տեղերը

26 Ցակաւին երկիրը, ու բաց տեղուանքը, եւ աշխարհիս հողերուն ‡ առջինը չստեղծուած,

27 Երբոր երկինքները կը պատրաստէր, ու անդնդոց երեսին վրայ կամար կը ձգէր, ես հոն էի ։

հ Ծն. Ա. 9, 10. Յոբ. ԼԸ. 10, 11. Սաղ. ԼԳ. 7. ՃԴ. 9. Երեմ. Ե. 22.

28 Երբոր վերի ամպերը կ'ուժովցընէր, եւ անդնդոց աղբիւրները կը հաստատէր,

ձ Յոբ. ԼԸ. 4.

29 Հ Երբոր ծովուն կանոն կը դնէր, որ ջուրերը իր հրամանէն դուրս չելլեն, ու երբոր Ձ երկրիս հիմերը կը ձգէր,

ղ Յովհ. Ա. 1, 2, 18. ճ Մատ. Գ. 17. Կող. Ա. 13.

30 Ղ Ան ատենը ես անոր քովը ճարտարապետ էի, Ճ եւ ամէն օր անոր զուարճութիւնն էի, ու միշտ անոր առջեւը կ'ուրախանայի ։

Ն Ք. գ. Ք. իււ 1000

31 Եւ աշխարհիս մէջ , ու անոր
երկրին վրայ կ'ուրախանայի , ու
իմ զուարճութիւնս մարդոց որ-
դիներուն հետ էր ։
32 Եւ հիմա ով որդիք՝ ինծի մտիկ
ըրէք . վասն զի իմ ճամբաներս
պահողները երջանիկ կ'ըլլան ։
33 Խրատ մտիկ ըրէք , ու իմաստուն
եղէք , ու զանիկայ մի՛ մերժէք ։
34 Երանի այն մարդուն՝ որ ինծի
մտիկ կ'ընէ , ամէն օր իմ դռնե-
րուս քովը կը հսկէ , և իմ դրան-
դիքներս կը դիտէ ։
35 Ինչու որ զիս գտնողը կեանք կը
գտնէ , ու Տէրոջմէ շնորհք կը
ստանայ ։
36 Բայց ինծի դէմ մեղանչողը իր
հոգւոյն անիրաւութիւն կ'ընէ , ու
բոլոր զիս ատողները մահը կը սի-
րեն ։

Սաղ. ժգ. 3 ։ Սաղ. ճժթ. 1, 2 ։ Ճիը. 1, 2 ։ Ղու. ժա. 28 ։ Գլ. գ. 13, 18 ։ Գլ. ժբ. 2 ։ Գլ. ի. 2 ։

---

## ԳԼ. Թ

1 Իմաստութեան գաստիարակութիւնը ։ 4 ու վարդապետութիւնը ։ 13 Յիմարութեան որպիսութիւնը ։ 16 ու մոլորութիւնը ։

1 Իմաստութիւնը իր տունը շինեց ,
ու իր եօթը սիւները կանգնեց ։
2 Իր անասունները մորթեց , իր
գինին խառնեց , ու իր սեղանը
պատրաստեց ։
3 Անիկայ իր աղախինները խրկեց ,
ու քաղաքին բարձր տեղերուն
վրայ կը կանչէ ։
4 Ո՛վ որ պարզամիտ է , թող
հոս դայ . ու պակասամիտ եղողին
կ'ըսէ ։
5 Եկէ՛ք իմ հացէս կերէ՛ք , ու
խառնած գինիէս խմեցէ՛ք ։
6 Յիմարութիւնը թողուցէ՛ք՝ որ
ապրիք , ու խոհեմութեան ճամ-
բուն մէ՛ջը քալեցէք ։
7 Ծաղր ընողը յանդիմանողը իրեն
անարգանք՝ ու ամբարիշտը խրա-
տողը իրեն արատ կը վաստըկի ։
8 Ծաղր ընողը մի՛ յանդիմաներ ,
որ չըլլայ թէ քեզի թշնամի ըլլայ .
իմաստունը յանդիմանէ , ու քեզ
պիտի սիրէ ։
9 Իմաստունին խրատ տուր , և ա-
ւելի իմաստուն պիտի ըլլայ . ար-
դար մարդուն սորվեցուր , ու իր
իմաստութիւնը պիտի աւելցնէ ։
10 Իմաստութեան սկիզբը Տէրոջը
վախն է , ու Ամենասուրբին գի-
տութիւնը հանճար է ։
11 Վասն զի քու օրերդ ինծմով
պիտի շատնան , և քեզի կենաց
տարիներ պիտի աւելնան ։
12 Թէ որ իմաստուն ես , քեզի ի-
մաստուն ես , ու թէ որ ծաղր ը-
նող ես , անոր պատիժը մինակ դուն
պիտի կրես ։
13 Անզգամ կնիկը աղաղակող կ'ըլ-
լայ . անիկայ անմիտ է , ու բան մը
չգիտեր ։
14 Եւ քաղաքին բարձր տեղուան-
քը՝ իր տանը դուռը աթոռի վրայ
կը նստի ,
15 Որ իրենց ճամբան շիտակ գացող
անցաւորները կանչէ ։
16 Ո՛վ որ պարզամիտ է , թող
հոս դայ . ու պակասամիտ եղողին
կ'ըսէ ։
17 Գողցուած ջուրերը անուշ են ,
և գաղտուկ հացը համով կ'ըլլայ ։
18 Բայց անիկայ չգիտեր որ հան
տեղը մեռելներ կան . ու անոր հը-
րաւիրած մարդիկները դժոխքին
անդունդներուն մէջն են ։

Մատ. ժզ. 18 ։ Եփե. բ. 20, 21, 22 ։ Ա Պետ. բ. 5 ։ Եբր. տաշեց ։ Մատ. իբ. 4 ։ Հմր 5 ։ Գլ. իգ. 30 ։ Կամ՝ լեցուց ։ Հռով. ժ. 15 ։ Հմր 14 ։ Գլ. ը. 1, 2 ։ Հմր 16 ։ Տես գլ. գ. 32 ։ Մատ. ժա. 25 ։ Հմր 2 ։ Երգ. ե. 1 ։ Ես. ծե. 1 ։ Յով. գ. 27 ։ Կամ՝ լեցուցած ։ Մատ. է. 6 ։ Սաղ. ճխա. 5 ։ Մատ. ժգ. 12 ։ Յոբ. իը. 28 ։ Սաղ. ճժա. 10 ։ Գլ. ա. 7 ։ Կամ՝ սըրբոց ։ Գլ. գ. 2, 16 ։ ժ. 27 ։ Յոբ. լե. 6, 7 ։ Գլ. է. 11 ։ Հմր 3 ։ Հմր 4 ։ Գլ. ի. 17 ։ Գլ. բ. 18 ։ է. 27 ։

---

## ԳԼ. Ժ

Աս գլխէս մինչև քսանուհինգերորդ գլուխը կը պարունակուին զանազան առաքինութիւններու , ու անոնց հակառակ եղող մոլութիւններուն վրայով ծանօթութիւններ ։

Սողոմոնին առակները ։

1 Իմաստուն տղան իր հայրը կ'ու-
րախացնէ . բայց անմիտ տը-
ղան իր մօրը տրտմութիւն է ։
2 Անօրէնութեան գանձերը օգուտ
չեն ըներ . բայց արդարութիւնը
մահուանէ կ'ազատէ ։
3 Տէրը արդարին հոգին անօթի
չթողուր . բայց ամբարիշտներուն
ցանկութիւնը կը խափանէ ։
4 Ծոյլ ձեռքով բանողը աղքատ
կ'ըլլայ . բայց ժիր մարդոց ձեռքը
հարստութիւն կը բերէ ։
5 Ան որ ամառը կը ժողվէ՝ խոհեմ
տղայ է . հունձքի ատեն քնացողը՝
ամօթոյ պատճառ եղող տղայ է ։
6 Արդարին գլխուն վրայ օրհնու-
թիւններ կան . բայց զրկողութիւ-
նը ամբարիշտներուն բերանը կը
գոցէ ։
7 Արդարներուն յիշատակը օրհ-
նեալ կ'ըլլայ . բայց ամբարիշտնե-
րուն անունը կը փտի ։
8 Իմաստուն սիրտ ունեցողը պա-
տուիրանքները կը բռնէ . բայց
յիմար շրթունք ունեցողը կը կոր-
ծանի ։
9 Կատարելութեամբ քալողը ա-
պահովութեամբ կը քալէ . բայց իր
ճամբաները ծռողը պիտի ճանչ-
ցուի ։
10 Աչքով ակնարկութիւն ընողը
նեղութիւն կու տայ . ու յիմար
շրթունք ունեցողը կը կործանի ։
11 Արդարին բերանը կենաց աղբիւր
է . բայց զրկողութիւնը ամբարիշտ-
ներուն բերանը կը գոցէ ։
12 Ատելութիւնը կռիւներ կը հա-
նէ . բայց սէրը ամէն յանցանքնե-
րը կը ծածկէ ։
13 Իմաստունին շրթանցը վրայ ի-

Գլ. ժե. 20 ։ ժէ. 21, 25 ։ ժթ. 13 ։ իթ. 3, 15 ։ Սաղ. խթ. 6 ։ Գլ. ժա. 4 ։ Ղու. ժբ. 19, 20 ։ Դան. դ. 27 ։ Սաղ. ժ. 14 ։ լդ. 9, 10 ։ լէ. 25 ։ Գլ. ժբ. 24 ։ ժթ. 15 ։ Գլ. ժզ. 4 ։ իա. 5 ։ Գլ. ժէ. 2 ։ ժթ. 26 ։ Հմր 11 ։ Եսթ. է. 8 ։ Սաղ. թ. 5, 6 ։ ճժբ. 6 ։ Ժող. ը. 10 ։ Հմր 10 ։ Սաղ. իգ. 4 ։ Գլ. իը. 18 ։ Ես. լգ. 15, 16 ։ Գլ. զ. 13 ։ Հմր 8 ։ Սաղ. լէ. 30 ։ Գլ. ժգ. 14 ։ ժը. 4 ։ Սաղ. ճէ. 42 ։ Հմր 6 ։ Գլ. ժէ. 9 ։ Ա Կոր. ժգ. 4 ։ Ա Պետ. դ. 8 ։

Ն. Ք. ԴՔ. իրր 1000

յ Գլ. Իզ. 3։
ղ Գլ. Ժը. 7։ Իա. 23։
ճ Յոբ. Լա. 24։ Սաղ. Ծբ. 7։ Գլ. Ժը. 11։ Ա Տիմ. Զ. 17։
մ Սաղ. Ժե. 3։
յ Ժող. Ե. 3։
ն Յակ. Գ. 2։
շ Ծն. Իդ. 35։ Իզ. 12։ Սաղ. Լէ. 22։
ո Գլ. Ժդ. 9։ Ժե. 21։
չ Յոբ Ժե. 21։
պ Սաղ. Ճխե. 19։ Մատ. Ե. 6։ Ա Յով. Ե. 14. 15։
ջ Սաղ. Լէ. 9. 10։
ռ Հմր 30։ Սաղ. Ժե. 5։ Մատ. Է. 24. 25։ Յովք. 18։
ս Գլ. Թ. 11։
վ Յոբ. Ժե. 32. 33։ Իբ. 16։ Սաղ. Ծե. 23։ Ժող. Է. 17։
տ Յոբ. Ը. 13։ Ժա. 20։ Սաղ. Ճժբ. 10։ Գլ. Ժա. 7։
ր Սաղ. Ա. 6։ Լէ. 20։
ց Սաղ. Լէ. 22. 29։ Ճիե. 1։ Հմր 25։
ւ Սաղ. Լէ. 30։

մաստութիւն կը գտնուի. բայց յպակասամիտ եղողին կռնակին համար գաւազան պէտք է։
14 Իմաստուններ գիտութիւն կը գանձեն. բայց ղյիմարին բերանը կործանման մօտ է։
15 ճՀարուստին ճոխութիւնը իր ամուր քաղաքն է. բայց տնանկներուն աղքատութիւնը՝ իրենց կործանումն է։
16 Արդարին գործը կենաց համար է. բայց ամբարշտին արդիւնքը մեղաց համար է։
17 Խրատ պահողը կենաց ճամբուն մէջն է. բայց յանդիմանութիւնը անարգողը կը մոլորի։
18 Ատելութիւնը ծածկողը՝ ստախօս շրթունք ունի, ու մբամբասանք հանողը անմիտ է։
19 յՇատ խօսքերու մէջ յանցանք պակաս չէ՛. բայց նիր շրթունքները զսպողը խելացի է։
20 Արդարին լեզուն ընտիր արծաթ է. ամբարիշտներուն սիրտը քիչ արժէք ունի։
21 Արդարին շրթունքները՝ շատերուն առաջնորդութիւն կ'ընեն. բայց յիմարները խելքի պակսութենէն կը մեռնին։
22 շՏէրոջը օրհնութիւնն է որ հարստութիւն կու տայ, ու անոր հետ տրտմութիւն չխառներ։
23 ոԶարութիւն ընելը յիմարին ըզբօսանքն է. բայց խոհեմ մարդուն՝ իմաստութիւնը։
24 չԶար մարդուն վախցած բանը իր վրայ կու գայ. բայց պարդարներուն փափաքը կը լեցուի։
25 Մրրիկը անցնելուն պէս՝ ջամբարիշտը բնաջինջ կ'ըլլայ. բայց ռարդարը յաւիտենական հիմ ունի։
26 Ինչպէս է քացախը ակռաներուն, և ծուխը աչքերուն, ծոյլն ալ զինք ղրկողներուն այնպէս է։
27 սՏէրոջը վախը օրեր կ'աւելցնէ. բայց վամբարիշտներուն տարիները պիտի կարճնան։
28 Արդարներուն յոյսը ուրախութիւն է. բայց տամբարիշտներուն ակնկալութիւնը պիտի կորսուի։
29 Տէրոջը ճամբան արդարին զօրութիւն է. րբայց անօրէնութիւն գործողներուն կործանում է։
30 ցԱրդարը պիտի չսասանի յաւիտեան. բայց ամբարիշտները երկրի վրայ պիտի չբնակին։
31 ւԱրդարին բերանը իմաստութիւն կը բղխէ. բայց նենգաւոր լեզուն պիտի կտրուի։
32 Արդարին շրթունքները հաճոյ բանը գիտեն. բայց ամբարիշտներուն բերանը միայն նենգութիւն կը խօսի։

## ԳԼ. ԺԱ

Ն. Ք. ԴՔ. իրր 1000

ա Ղև. ԺԹ. 35. 36։ Բ Օր. Իե. 13-16։ Գլ. Ժզ. 11։ Ի. 10. 23։
բ Գլ. Ժե. 33։ Ժզ. 18։ Ժը. 12։ Դան. Դ. 30. 31։
գ Գլ. Ժգ. 6։
դ Գլ. Ժ. 2։ Եզեկ. Է. 19։ Սոփ. Ա. 18։
ե Ծն. Է. 1։
զ Գլ. Ե. 22։ Ժող. Թ. 12։
* Կամ՝ ցանկութեանը
է Գլ. Ժ. 28։
ը Գլ. Իա. 18։
թ Յոբ. Ը. 13։
ժ Եսթ. Ը. 15։ Գլ. Իը. 12. 28։
ի Գլ. ԻԹ. 8։
լ Ղև. ԺԹ. 16։ Գլ. Ի. 19։
խ Գ Թագ. ԺԲ. 1, ևն. Գլ. Ժե. 22։ Իդ. 6։
* Կամ՝ առաջնորդութեան
ծ Գլ. Զ. 1։
կ Գլ. Լա. 30։
† Կամ՝ բռնաւոր
հ Մատ. Ե. 7։ Իե. 34, ևն.

1 աՆենգութեան կշիռքը Տէրոջը առջևը պիղծ է. բայց ուղիղ կշիռքի քարը անոր հաճոյ է։
2 բԵրբոր հպարտութիւնը գայ, անարգութիւնն ալ կու գայ. բայց իմաստութիւնը խոնարհներուն հետ է։
3 գՈւղիղներուն շիտակութիւնը անոնց առաջնորդութիւն կ'ընէ. բայց անօրէններուն ծռութիւնը զանոնք բնաջինջ կ'ընէ։
4 դԲարկութեան օրը հարստութիւնը օգուտ մը չըներ. բայց եարդարութիւնը մահուանէ կ'ազատէ։
5 Կատարեալներուն արդարութիւնը անոնց ճամբան կը շիտկէ. բայց անիրաւը իր անիրաւութեամբը կ'իյնայ։
6 Ուղիղներուն արդարութիւնը զանոնք կ'ազատէ. բայց զանօրէնները իրենց *չարութեանը մէջ կը բռնուին։
7 էԵրբոր չար մարդը մեռնի, անոր ակնկալութիւնը կը կորսուի. և անօրէններուն յոյսը կը կորսուի։
8 ըԱրդարը նեղութենէ կ'ազատի, ու անոր տեղը ամբարիշտը կ'երթայ։
9 թԿեղծաւորը բերնովը իր դրացին կը կործանէ. բայց արդարները գիտութեամբ կ'ազատին։
10 ժԱրդարներուն յաջողութեանը վրայ քաղաքը կ'ուրախանայ. ու երբոր չարերը կորսուին, ցնծութեան ձայն կը լսուի։
11 իՈւղիղներուն օրհնութիւնովը քաղաքը կը բարձրանայ. բայց ամբարիշտներուն բերնովը կը կործանի։
12 Պակասամիտ եղողը իր դրացին կ'արհամարհէ. բայց խոհեմ մարդը կը լռէ։
13 լԲանսարկութեան պտըտողը գաղտնիքը կը յայտնէ. բայց հաւատարիմ հոգի ունեցողը բանը կը ծածկէ։
14 Ժողովուրդը խառանց *խոհականութեան կը կործանի. բայց խորհրդականներու բազմութեամբ փրկութիւն կ'ըլլայ։
15 ծՕտարականին երաշխաւոր եղողը անշուշտ չարիքի կը հանդիպի. բայց երաշխաւորութիւնը ատողը ապահով է։
16 կՇնորհալի կնիկը պատիւ կ'ըստանայ. և †զօրաւոր մարդիկները հարստութիւն կը ստանան։
17 հՈղորմած մարդը իր անձին աղէկութիւն կ'ընէ. բայց անողորմ մարդը իր մարմնոյն նեղութիւն կու տայ։

Ն. Ք. ԳՔ. Իրր 1000

18 Չար մարդը սնոտի գործ կը գործէ. բայց Յ արդարութիւն ցանողը ապահով վարձք կ'ունենայ։
19 Ինչպէս որ արդարութիւնը կենաց կ'առաջնորդէ, նոյնպէս ալ չարութեան հետևողը իր մահուանը կ'երթայ։
20 Ծուռ սիրտ ունեցողները Տէրոջը առջևը պիղծ են. բայց ուղիղ ճամբայ քալողները անոր հաճոյ են։
21 Ղ Անօրէնները * ձեռք ձեռքի տալով մէկտեղ, անպատիժ պիտի չմնան. բայց Ճ արդարներուն սերունդը պիտի ազատի։
22 Գեղեցիկ կնիկը՝ որ խոհեմութիւն չունի, խոզին քիթը դրուած ոսկի օղակին կը նմանի։
23 Արդարներուն ցանկութիւնը միայն բարութիւն է. բայց անօրէններուն ակնկալութիւնը Մ բարկութիւն պիտի ըլլայ։
24 Մարդ կայ որ Յ իր ստացուածքը ցրուելով կ'աւելցնէ, ու մարդ կայ որ չափէ դուրս կը խնայէ, բայց կարօտութեան կը հասնի։
25 Ն Բարերար անձը պիտի գիրնայ. Շ և ան որ կ'ոռոգէ՝ ինքն ալ պիտի ոռոգուի։
26 Ո Ցորենը պահողին՝ ժողովուրդը անէծք կու տայ. բայց Չ զանիկայ ծախողին գլխուն վրայ օրհնութիւն կ'ըլլայ։
27 Աղէկութեան համար փոյթ ունեցողը շնորհք կը ստանայ. Պ բայց ով որ գէշութիւն կը փնտռէ, անիկայ իրեն պիտի հանդիպի։
28 Ջ Իր հարստութեանը վրայ յոյսը դնողը պիտի իյնայ. բայց Ռ արդարները կանանչ տերևի պէս պիտի ծաղկին։
29 Իր տանը նեղութիւն տուողը Ս հով պիտի ժառանգէ. ու յիմարը՝ իմաստուն սիրտ ունեցողին ծառայ պիտի ըլլայ։
30 Արդարին պտուղը կենաց ծառ է. և Տ հոգիներ վաստըկողը իմաստուն է։
31 Ր Ահա արդարը երկրի վրայ պատիժ կը կրէ. ո՜ւր մնաց ամբարիշտը ու մեղաւորը։

Յ Ովս. Ժ. 12։ Գաղ. Զ. 8։ 9։ Յակ. Գ. 18։
Ղ Գլ. ԺԶ. 5։
* Կամ՝ ազգէ ազգ
Ճ Սաղ. ՃԺԲ. 2։
Մ Հռով. Բ. 8. 9։
Յ Սաղ. ՃԺԲ. 9։
Ն Բ Կոր. Թ. 6-10։
Շ Մատ. Ե. 7։
Ո Ամով. Ը. 5, 6։
Չ Յոբ. ԻԹ. 13։
Պ Եսթ. Է. 10։ Սաղ. Է. 15, 16։ Թ. 15, 16։ Ժ. 2։ ԾԷ. 6։
Ջ Յոբ. ԼԱ. 24։ Սաղ. ԽԲ. 7։ Մար. Ժ. 24։ Ղուկ. ԺԲ. 21։ Ա Տիմ. Զ. 17։
Ռ Սաղ. Ա. 3։ ԾԲ. 8։ ՂԲ. 12։ Եր. Երեմ. ԺԷ. 8։
Ս Ժող. Ե. 16։
Տ Դան. ԺԲ. 3։ Ա Կոր. Թ. 19։ Յակ. Ե. 20։
Ր Երեմ. ԻԵ. 29։ Ա Պետ. Դ. 17, 18։

## ԳԼ. ԺԲ

1 Խրատը սիրողը գիտութիւնը կը սիրէ. ու յանդիմանութիւնը ատողը անմիտ է։
2 Ա Բարի մարդը Տէրոջմէ շնորհք կը ստանայ. բայց Աստուած նենգաւոր մարդը պիտի դատապարտէ։
3 Մարդը անիրաւութեամբ հաստատութիւն չունենար. բայց Բ արդարներուն արմատը չշարժիր։
4 Գ Առաքինի կնիկը իր էրկանը պսակ է. բայց նախատինք բերողը՝ անոր ոսկորներուն մէջի փտութեանը պէս է։
5 Արդարներուն մտածութիւնները իրաւունք են. Դ բայց ամբարիշտներուն խորհուրդները նենգութիւն են։
6 Ե Ամբարիշտներուն խօսքերը արիւնի համար դարան են. Զ բայց ուղիղներուն բերանը զիրենք կ'ազատէ։
7 Է Ամբարիշտները կը կործանին, ու բնաջինջ կ'ըլլան. բայց արդարներուն տունը կը հաստատուի։
8 Մարդը իր խոհեմութեանը չափ կը գովուի. Ը բայց ծուռ սիրտ ունեցողը կ'անարգուի։
9 Թ Անշան մարդը՝ որ ծառայ ունի, զինքը մեծցնող ու հացի կարօտ եղողէն աղէկ է։
10 Ժ Արդարը իր անասուններուն կենացը համար հոգ կը տանի. բայց ամբարիշտներուն աղիքները անողորմ են։
11 Ի Իր երկիրը գործողը հացով կը կշտանայ. բայց դատարկ մարդիկներուն հետևողը Լ պակասամիտ է։
12 Ամբարիշտը չարերուն աւարին կը փափաքի. բայց արդարներուն արմատը պտուղ կու տայ։
13 Խ Չարը իր շրթունքներուն յանցանքովը որոգայթը կ'իյնայ. Ծ բայց արդարը նեղութենէն կ'ելլէ։
14 Կ Մարդը իր բերնին պտուղէն բարիքներով կը լեցուի. Հ ու մարդուն ձեռաց հատուցումը իրեն պիտի դառնայ։
15 Ձ Յիմարին ճամբան՝ իր աչքերուն շիտակ է. բայց խրատ մտիկ ընողը իմաստուն է։
16 Ղ Յիմարը նոյն օրը կը յայտնէ իր բարկութիւնը. բայց անարգանքը ծածկողը խելացի է։
17 Ճ Ճշմարտութիւն խօսողը արդարութիւն կը յայտնէ. իսկ սուտ վկան՝ նենգութիւն։
18 Մ Մարդիկներ կան՝ որ իրենց շատախօսութեամբը սուրի պէս կը խոցոտեն. բայց իմաստուններուն լեզուն բժշկութիւն է։
19 Ճշմարտախօս շրթունքը միշտ հաստատ կը մնայ. Յ բայց ստախօս լեզուն վայրկենական է։
20 Չարութիւն մտածողին սրտին մէջը նենգութիւն կ'ըլլայ. բայց խաղաղութեան համար խորհուրդ ընողները ուրախութիւն կ'ունենան։
21 Արդարին բնաւ չարիք չհանդիպիր. բայց ամբարիշտները թշուառութիւններով կը լեցուին։
22 Ն Սուտ շրթունքը Տէրոջը զզուելի է. բայց հաւատարմութիւն ընողները անոր հաճոյ են։

Ա Գլ. Ը. 35։
Բ Գլ. Ժ. 25։
Գ Գլ. ԼԱ. 23։ Ա Կոր. ԺԱ. 7։

Ն. Ք. ԳՔ. Իրր 1000

Դ Գլ. ԺԴ. 30։
Ե Գլ. Ա. 11, 18։
Զ Գլ. ԺԴ. 3։
Է Սաղ. ԼԷ. 36, 37։ Գլ. ԺԱ. 21։ Մատ. Է. 24–27։
Ը Ա Թագ. ԻԵ. 17։
Թ Գլ. ԺԳ. 7։
Ժ Բ Օր. ԻԵ. 4։
Ի Ծն. Գ. 19։ Գլ. ԻԸ. 19։
Լ Գլ. Զ. 32։
Խ Գլ. ԺԸ. 7։
Ծ Բ Պետ. Բ. 9։
Կ Գլ. ԺԳ. 2։ ԺԸ. 20։
Հ Եսայ. Գ. 10, 11։
Ձ Գլ. Գ. 7։ Ղուկ. ԺԸ. 11։
Ղ Գլ. ԻԹ. 11։
Ճ Գլ. ԺԴ. 5։
Մ Սաղ. ԽԵ. 4։ ԾԹ. 7։ ԿԴ. 3։
Յ Սաղ. ԿԲ. 5։ Գլ. ԺԹ. 9։
Ն Գլ. Զ. 17։ ԺԱ. 20։ Յայտ. ԻԲ. 15։

Ն. Ք. գԲ. իբր 1000

ն Գլ. ժգ. 16։ ժե. 2։
23 ն Խոհեմ մարդը իր գիտցածը կը ծածկէ. բայց յիմարներուն սիրտը յիմարութիւն կը հրատարակէ։

ո Գլ. ժ. 4։
24 ո Ժիր մարդոց ձեռքը կ'իշխէ, ու ծոյլը հարկատու կ'ըլլայ։

շ Գլ. ժե. 13։
պ Ես. ծ. 4։
25 շ Մարդուն սրտին մէջը եղող վիշտը՝ զանիկայ կը ճնշէ. բայց պ աղէկ խօսքը կ'ուրախացնէ զանիկայ։

* Կամ՝ իր ընկերէն գերազանց է.
26 Արդարը՝ *իր ընկերին ճամբայ կը ցուցնէ". բայց ամբարիշտներուն ճամբան զիրենք կը մոլորցնէ։

27 Ծոյլը իր որսը չեփեր. բայց ժիր մարդուն ստացուածքը պատուական է։

28 Արդարութեան ճամբուն մէջը կեանք կայ. բայց շեղերուն կոխած ճամբան մահուան կը տանի։

ԳԼ. ԺԳ

ա Ա Թագ. բ. 25։
1 Իմաստուն տղան իր հօրը խրատը մտիկ կ'ընէ. ա բայց ծաղր ընողը յանդիմանութիւնը մտիկ չըներ։

բ Գլ. ժբ. 14։
2 բ Մարդը իր բերնին պտուղէն բարութիւն կ'ուտէ. բայց անօրէններուն հոգին՝ բռնութիւն։

գ Սաղ. լթ. 1։ Գլ. իա. 23։ Յակ. գ. 2։
3 գ Իր բերանը զգուշացողը իր անձը կը պահէ. բայց շրթունքները լայն բացողը պիտի կորսուի։

դ Գլ. ժ. 4։
4 դ Ծոյլին հոգին կը ցանկայ, ու բան մը չունի. բայց ժրաջան մարդոց հոգին կը գիրնայ։

5 Սուտ խօսքը արդարին ատելի է. բայց ամբարիշտը ամօթալից ու խայտառակ վարք ունի։

ե Գլ. ժա. 3, 5, 6։
6 ե Արդարութիւնը կատարելութեամբ քալողները կը պաշտպանէ. բայց չարութիւնը մեղաւորները կը կործանէ։

զ Գլ. ժբ. 9։
7 զ Կան որ զիրենք հարուստ կը ցուցնեն, ու բան մը չունին, ու կան որ զիրենք աղքատ կը ցուցնեն, ու շատ հարստութիւն ունին։

8 Մարդուն կենացը փրկանքը իր հարստութիւնն է. բայց աղքատը յանդիմանութիւն չլսեր։

է Յոբ. ժը. 5, 6։ իա. 17։ Գլ. իդ. 20։
9 Արդարներուն լոյսը զուարթ պիտի ըլլայ. է բայց ամբարիշտներուն ճրագը պիտի մարի։

10 Յիրաւի հպարտութենէ կռիւ կը ծագի. բայց խրատ մտիկ ընողներուն քովը իմաստութիւն կայ։

ը Գլ. ժ. 2։ ի. 21։
† Եբր. Ունայնութենէ
11 ը † Անիրաւութեամբ ժողվուած հարստութիւնը պիտի պակսի. բայց իր աշխատութեամբը ժողվողը պիտի շատցնէ։

թ Հմր 19։
12 Ուշացած յոյսը՝ սիրտը կը հիւանդացնէ. բայց թ փափաքին հասնիլը կենաց ծառ մըն է։

ժ Բ Մն. լզ. 16։
13 ժ Խօսքը արհամարհողը պիտի կորսուի. բայց պատուիրանքէն վախցողը վարձք պիտի առնէ։

ի Գլ. ժ. 11։ ժդ. 27։ ժզ. 22։
14 ի Իմաստունին օրէնքը կենաց աղբիւր է, լ մահուան որոգայթներէն ազատ մնալու համար։

լ Բ Թագ. իբ. 6։
15 Բարի խոհեմութիւնը շնորհք կուտայ. բայց անօրէններուն ճամբան դժուարին է։

խ Գլ. ժբ. 23։ ժե. 2։
16 խ Ամէն խելացի իմաստութեամբ կը գործէ. բայց անմիտը յիմարութիւն կը տարածէ։

17 Չար պատգամաւորը թշուառութեան մէջ կ'իյնայ. բայց ծ հաւատարիմ դեսպանը բժշկութիւն է։

ծ Գլ. իե. 13։
18 Խրատ անարգողը աղքատութիւն ու անարգութիւն կը բերէ. բայց կ յանդիմանութիւն մտիկ ընողը պատիւ կը գտնէ։

կ Գլ. ժե. 5, 31։
հ Հմր 12։
19 հ Փափաքին կատարուիլը հոգիին անուշ է. ու չարագործութենէ ետ կենալը յիմարներուն զզուելի է։

20 Իմաստուններուն հետ քալողը իմաստուն կ'ըլլայ. բայց անմիտներուն հետ ընկերացողը ‡ չար կ'ըլլայ"։

‡ Կամ՝ չարիքի կը հանդիպի։
ձ Սաղ. լբ. 10։
21 ձ Մեղաւորներուն ետևէն ձախորդութիւն կ'երթայ. բայց արդարներուն բարիք կը հատուցուի։

ղ Յոբ. իէ. 16, 17։ Գլ. իբ. 8։ Ժող. բ. 26։
22 Բարի մարդը իր որդւոցը որդիներուն ժառանգութիւն կը թողու. բայց ղ մեղաւորին ստացուածքը արդարին համար կը պահուի։

ճ Գլ. ժբ. 11։
23 ճ Աղքատներուն մշակած երկրին մէջը շատ ուտելիք կայ. բայց մարդ կայ որ՝ իր անխոհեմութենէն կը կորսուի։

մ Գլ. ժթ. 18։ իբ. 15։ իգ. 13։ իթ. 15, 17։
24 մ Գաւազանին խնայողը իր որդին կ'ատէ. բայց զանիկայ սիրողը կանուխկէկ կը խրատէ։

յ Սաղ. լդ. 10։ լէ. 3։
25 յ Արդարը մինչև իր անձին կշտանալը կ'ուտէ. բայց ամբարիշտներուն փորը կարօտութիւն պիտի քաշէ։

ԳԼ. ԺԴ

ն Գլ. իգ. 3։
ր Հռութ. դ. 11։
1 ն Իմաստուն կնիկները ր իրենց տունը կը շինեն. բայց յիմար կնիկը զանիկայ իր ձեռքովը կը փլցնէ։

շ Յոբ. ժբ. 4։
2 Իր ուղղութեանը մէջ քալողը Տէրոջմէ կը վախնայ. շ բայց ծուռ ճամբայ ունեցողը զանիկայ կ'անարգէ։

ո Գլ. ժբ. 6։
3 Յիմարին բերանը հպարտութեան գաւազան կայ. ո բայց իմաստուններուն շրթունքները զիրենք կը պահեն։

4 Ուր որ արջառ չկայ, մսուրը մաքուր կը մնայ. իսկ արդիւնքին առատութիւնը եզին զօրութենէն յառաջ կու գայ։

չ Ել. ի. 16։ իգ. 1։ Գլ. զ. 19։ ժբ. 17։ Հմր 25։
5 չ Ճշմարտութեան վկան սուտ չըխօսիր. բայց անիրաւ վկան ստութիւններ կը թափէ բերնէն։

6 Ծաղր ընողը իմաստութիւն կը փնտռէ, ու * չգտներ. բայց հիմաստուններուն համար՝ գիտութիւնը դիւրին է։
7 Յիմար մարդէն հեռացի՛ր, երբոր կ'իմանաս որ իմաստուն շրթունքներ չունի։
8 Խելացի մարդուն իմաստութիւնը իր ճամբան հասկընալն է. բայց յիմարներուն անմտութիւնը նենգութիւն է։
9 † Յիմարները յանցանքը ծաղր կ'ընեն. բայց ուղիղներուն մէջը ներողամտութիւն կայ։
10 Մարդուն սիրտը իր հոգիին ցաւը կը ճանչնայ. ու անոր ուրախութեանը՝ ուրիշը մասնակից չըլլար։
11 ‡ Ամբարիշտներուն տունը պիտի կործանի. բայց ուղիղներուն վրանը պիտի ծաղկի։
12 || Ճամբայ կայ որ մարդուն շիտակ կ'երեւնայ, բայց ¶ անոր վախճանը մահուան ճամբաներն է։
13 Ծիծաղելու ատենն ալ՝ մարդուս սիրտը տրտմութիւն կը զգայ, և ուրախութեան վախճանը սուգ կ'ըլլայ։
14 Ապականած սիրտը իր ճամբաներէն՝ ու բարի մարդը ինքիրմէն պիտի կշտանայ։
15 Միամիտ մարդը ամէն խօսքի կը հաւատայ. բայց խելացին՝ իր քայլերը կը քննէ։
16 ** Իմաստունը կը վախնայ, ու չարութենէ կը փախչի. բայց անմիտը կը հպարտանայ, ու յանձնապաստան կ'ըլլայ։
17 Շուտ բարկացողը յիմարութիւն կ'ընէ. ու նենգամիտ մարդը ատելի է։
18 Անխոհեմները անմտութիւն կը ժառանգեն. բայց խելացիները գիտութեամբ կը պսակուին։
19 Չարերը բարիներուն առջեւը կը խոնարհին, և ամբարիշտները արդարներուն դրանը քովը։
20 †† Աղքատը մինչեւ անգամ իր ընկերին ատելի է. բայց հարուստին բարեկամները շատ են։
21 Իր ընկերը անարգողը մեղք կը գործէ. ‡‡ բայց աղքատին ողորմութիւն ընողը երանելի կ'ըլլայ։
22 Ահա չարութիւն մտածողները կը մոլորին. բայց բարութիւն մտածողներուն՝ ողորմութիւն ու ճշմարտութիւն կ'ըլլայ։
23 Ամէն աշխատանքի մէջ օգուտ մը կայ. բայց † դատարկաբանութիւնը՝ միայն կարօտութեան կը տանի մարդը։
24 Իմաստուններուն հարստութիւնը իրենց պսակն է. բայց անմիտներուն ‡ յիմարութիւնը յիմարութիւն է։
25 § Հաւատարիմ վկան հոգիներ կ'ազատէ. բայց խարդախը՝ ստութիւններ դուրս կու տայ։
26 Տէրոջը վախին մէջը հաստատ վստահութիւն կայ. ու անոր որդիքը ապաւէն պիտի ունենան։
27 ¶ Տէրոջը վախը կենաց աղբիւր է, մահուան որոգայթներէն ազատ մնալու համար։
28 Ժողովուրդին բազմութիւնը թագաւորին պատիւն է. բայց ժողովուրդին նուազութիւնը իշխանին կործանումն է։
29 ** Երկայնամիտ մարդը շատ խոհեմ է. իսկ կարճամիտը շատ յիմարութիւն կ'ընէ։
30 || Հանդարտ սիրտը մարմնոյն կեանք է. բայց †† նախանձը ‡‡ ոսկորներուն փտութիւն է։
31 * Աղքատին զրկանք ընողը՝ † անոր Ստեղծիչը կ'անարգէ. բայց տնանկին ողորմութիւն ընողը՝ զԱնիկայ կը պատուէ։
32 Ամբարիշտը իր չարութեանը համար կը վռընտուի. բայց ‡ արդարը իր մահուան ատենը ապաւէն կ'ունենայ։
33 Խելացի մարդուն սրտին մէջը իմաստութիւն կը հանգչի. իսկ § յիմարներուն ներսը եղածը կը ճանչցուի։
34 Արդարութիւնը ազգը կը բարձրացնէ. բայց մեղքը ժողովուրդներուն անարգանք է։
35 ¶ Խոհեմ ծառային՝ թագաւորը կը հաճի. բայց նախատինք բերող ծառային կը բարկանայ։

ԳԼ. ԺԵ

1 ** Մեղմ պատասխանը սրտմտութիւնը կ'իջեցնէ. բայց †† խիստ խօսքը բարկութիւնը կը գրգռէ։
2 Իմաստուններուն լեզուն գիտութիւնը հաճոյ կ'երեւցնէ. ‡‡ բայց անմիտներուն բերանը յիմարութիւն կը բղխէ։
3 * Տէրոջը աչքերը ամէն տեղ չարերը ու բարիները կը դիտեն։
4 § Խաղաղասէր լեզուն կենաց ծառ է. բայց խռովարար լեզուն սիրտ կը կոտրէ։
5 † Յիմարը իր հօրը խրատը կ'անարգէ. ‡ բայց յանդիմանութեան հնազանդողը խելացի կ'ըլլայ։
6 Արդարին տունը մեծ գանձ կայ. բայց ամբարշտին եկամուտներուն մէջը խռովութիւն կայ։
7 Իմաստուններուն շրթունքները գիտութիւն կը տարածեն. բայց յիմարներուն միտքը ‡ այնպէս չէ։

Ն. Ք. ԳՔ. ԻՐ. 1000
* Եբր. չկայ. Գլ. Ը. 9։ ԺԷ. 24։
† Գլ. Ժ. 23։
‡ Յոբ. Ը. 15։
|| Գլ. ԺԶ. 25։
¶ Հռով. Զ. 21։
** Գլ. Ե. 4։ Ժող. Բ. 2։
Գլ. Ա. 31։ ԺԲ. 14։
** Գլ. ԻԲ. 8։
†† Գլ. ԺԹ. 7։
‡‡ Սաղ. ԽԱ. 1։ ՃԺԲ. 9։
† Եբր. շրթունքներուն խօսքը՝

Ն. Ք. ԳՔ. ԻՐ 1000
‡ Կամ՝ մոլութիւնը
§ Հմր 5։
¶ Գլ. ԺԳ. 14։
** Գլ. ԺԶ. 32։ Յակ. Ա. 19։
|| Կամ՝ Ողջ
†† Սաղ. ՃԺԲ. 10։
‡‡ Գլ. ԺԲ. 4։
* Գլ. ԺԷ. 5։ Մատ. ԻԵ. 40, 45, 46։
† Տես Յոբ. ԼԱ. 15, 16։ Գլ. ԻԲ. 2։
‡ Յոբ. ԺԳ. 15։ ԺԹ. 26։ Սաղ. ԻԳ. 4։ ԼԷ. 37։ Բ Կոր. Ա. 9։ Ե. 8։ Բ Տիմ. Դ. 18։
§ Գլ. ԺԲ. 16։ ԻԹ. 11։
¶ Մատ. ԻԴ. 45, 47։

** Դատ. Ը. 1, 2, 3։ Գլ. ԻԵ. 15։
†† Ա Թագ. ԻԵ. 10, ԺԱ։ Գ Թագ. ԺԲ. 13, 14, 16։
‡‡ Հմր 28։ Գլ. ԺԲ. 23։ ԺԳ. 16։
* Յոբ. ԼԴ. 21։ Գլ. Ե. 21։ Երեմ. ԺԶ. 17։ ԼԲ. 19։ Եբր. Դ. 13։
§ Կամ՝ Բժշկութիւն տուող
† Գլ. Ժ. 1։
‡ Գլ. ԺԳ. 18։ Հմր 31, 32։
‡ Կամ՝ հաստատ

Ն. Ք. Ք. Ք. իբր 1000

ա Գլ. իա. 27։ իը. 9։ Եսա. 11։ կա. 8։ կզ. 3։ Երեմ. զ. 20։ է. 22։ Ամով. ե. 22։
բ Գլ. իա. 21։ ա Տիմ. զ. 11։
գ Թագ. իբ. 8։
դ Կամ՝ խրատը դէշ կ'ըլլայ։
ե Գլ. ե. 12։ ժ. 17։
զ Յոբ. իզ. 6։ Սաղ. ճլթ. 8։
է Գ Մն. զ. 30։ Սաղ. է. 9։ Խզ. 21։ Յով. բ. 24, 25։ իա. 17։ Գոր. ա. 24։
ը Ամով. ե. 10։ բ Տիմ. դ. 3։
թ Գլ. ժէ. 22։
ժ Գլ. ժբ. 25։
ի Գլ. ժէ. 22։
լ Սաղ. լէ. 16։ Գլ. ժզ. 8։ ա Տիմ. զ. 6։
խ Գլ. ժէ. 1։
ծ Գլ. իզ. 21։ իթ. 22։
կ Գլ. իբ. 5։
հ Գլ. ժ. 1։ իթ. 3։
ձ Գլ. ժ. 23։
ղ Եփե. ե. 15։
ճ Գլ. ժա. 14։ ի. 18։
մ Գլ. իե. 11։
յ Փիլ. գ. 20։ Կող. գ. 1, 2։
ն Գլ. ժբ. 7։ ժգ. 11։
շ Սաղ. կը. 5, 6։ Ճիզ. 9։
ո Գլ. զ. 16, 18։
չ Սաղ. լէ. 30։
պ Գլ. ժա. 19։ Եսա. ե. 8։ Երեմ. ժէ. 11։

8 Ամբարիշտներուն զոհը Տէրոջը առջեւ պիղծ է. բայց ուղիղներուն աղօթքը անոր ընդունելի է։
9 Տէրը ամբարշտին ճամբայէն կը զզուի, բայց արդարութեան հետեւողը կը սիրէ։
10 Ուղիղ ճամբան մերժողին դէշ պատիժ կ'ըլլայ. ու յանդիմանութիւնը ատողը պիտի մեռնի։
11 Դժոխքը ու կորուստը Տէրոջը առջեւն է. որչափ աւելի մարդոց որդիներուն սիրտերը։
12 Ծաղր ընողը իր յանդիմանիչը չսիրեր, և իմաստուններուն քովը չերթար։
13 Ուրախ սիրտը երեսը կը զուարթացընէ. բայց սրտին տրտմութենէն հոգին կը ճնշուի։
14 Հանճարեղ սիրտը գիտութիւն կը փնտռէ. բայց անմիտներուն բերանը յիմարութեամբ կը սնանի։
15 Վշտալից մարդուն ամէն օրերը դէշ են. բայց ուրախ սիրտը մըշտընջենաւոր կոչունքի մէջ է։
16 Աւելի աղէկ է քիչ բանը Տէրոջը վախովը, քան թէ մեծ գանձը խռովութիւնով։
17 Աւելի աղէկ է սէր եղած տեղը խոտեղէն կերակուրը, քան թէ գէր զուարակը ատելութիւնով։
18 Բարկասիրտ մարդը վէճ կը հանէ. բայց երկայնամիտը կռիւը կը դադրեցընէ։
19 Ծոյլին ճամբան փշեղէն ցանկի պէս է. բայց ուղիղներուն ճամբան բանուկ է։
20 Իմաստուն տղան իր հայրը կ'ուրախացընէ. բայց անմիտ մարդը իր մայրը կ'անարգէ։
21 Պակասամիտ մարդուն՝ յիմարութիւնը զբօսանք է. բայց իմաստուն մարդը կ'ուղղէ իր ընթացքը։
22 Առանց խորհուրդի՝ դիտաւորութիւնները կը ցրուին. բայց խորհրդականներուն շատութիւնովը կը հաստատուին։
23 Մարդ իր բերնին պատասխանովը կ'ուրախանայ. ու ատենովը ըսուած խօսքը որչափ գեղեցիկ է։
24 Կենաց ճամբան խոհեմ մարդը դէպ 'ի վեր կը տանի, որ վարի դժոխքէն հեռանայ։
25 Տէրը հպարտներուն տունը կը կործանէ. բայց որբեւայրիին սահմանը կը հաստատէ։
26 Չար մարդուն խորհուրդները Տէրոջը առջեւ պիղծ են. բայց պարկեշտներուն խօսքերը հաճելի են։
27 Ագահութեան անձնատուր եղողը իր տունը խռովութեան մէջ կը ձգէ. բայց կաշառքներէ զզուողը պիտի ապրի։
28 Արդարին սիրտը՝ տալու պատասխանը կը մտածէ. բայց ամբարիշտներուն բերանը չարիք կը բղխէ։
29 Տէրը ամբարիշտներէն հեռու է. բայց արդարներուն աղօթքը կը լսէ։
30 Աչաց լոյսը սիրտը կ'ուրախացընէ. բարի լուրը ոսկորները կը գիրցընէ։
31 Կենաց յանդիմանութիւնը լսող ականջը իմաստուններուն մէջը կը բնակի։
32 Խրատ մերժողը իր հոգին կ'անարգէ. բայց յանդիմանութիւն մտիկ ընողը խելք կը վաստըկի։
33 Տէրոջը վախը իմաստութեան խրատն է, ու փառաց առջեւէն՝ խոնարհութիւնը կ'երթայ։

## ԳԼ. ԺԶ

1 Սրտին տրամադրութիւնները մարդուն կը վերաբերին. բայց լեզուին պատասխանը Տէրոջմէն է։
2 Մարդուն ամէն ճամբաները իրեն մաքուր կ'երեւնան. բայց Տէրը հոգիները կը կշռէ։
3 Քու գործքերդ Տէրոջը յանձնէ, և քու խորհուրդներդ պիտի հաստատուին։
4 Տէրը ամէն բան իր նպատակին համար ստեղծեց, ու ամբարիշտն ալ՝ ձախորդ օրուան համար։
5 Ամէն սրտով հպարտները Տէրոջը առջեւ պիղծ են, ու ձեռք ձեռքի տալով ալ, անպատիժ պիտի չմնան։
6 Ողորմութեամբ և ճշմարտութեամբ անօրէնութիւնը կը քաւուի, ու Տէրոջը վախովը մարդ չարութենէ կը հեռանայ։
7 Երբոր Տէրը մարդուն ճամբաներուն կը հաճի, մինչև անգամ անոր թշնամիները կը հաշտեցընէ անոր հետ։
8 Աղէկ է քիչ բան արդարութեամբ, քան թէ մեծ եկամուտներ անիրաւութեամբ։
9 Մարդուն սիրտը իր ճամբան կը հնարէ. բայց անոր քայլերը Տէրը կ'ուղղէ։
10 Թագաւորին շրթունքներուն վրայ աստուածային ազդեցութիւն կայ. անոր բերանը դատաստանի մէջ չսխալիր։
11 Ուղիղ կշռորդը և կշիռքը Տէրոջն է. մախաղին ամէն կշռոց քարերը անոր գործքն են։
12 Չարագործութիւնը թագաւորներուն զզուելի է. վասն զի հա-

Ն. Ք. Ք. Ք. իբր 1000

ք Ապգծո. գ. 15։
ր Սաղ. ժ. 1։ լդ. 16։
ս Սաղ. ճխե. 18, 19։
տ Հմր 5։
ւ Գլ. ա. 7։
փ Գլ. ժը. 12։

ա Հմր 9։ Գլ. ժթ. 21։ ի. 24։ Երեմ. ժ. 23։
բ Մատ. ժ. 19, 20։
գ Գլ. իա. 2։
դ ա Թագ. ժզ. 7։
ե Սաղ. լէ. 5։ ծե. 22։ Մատ. զ. 25։ Ղու. ժբ. 22։ Փիլ. դ. 6։ ա Պետ. ե. 7։
զ Եսա. խզ. 7։ Հռով. ժա. 36։
է Կամ՝ իրեն
ը Յոբ. իա. 30։ Հռով. թ. 22։
թ Գլ. զ. 17։ ը. 13։
ժ Գլ. ժա. 21։
ի Կամ՝ ազգէ ազգ
լ Դան. դ. 27։ Ղու. ժա. 41։
խ Գլ. ժգ. 16։
ծ Սաղ. լէ. 16։ Գլ. ժե. 16։
կ Հմր 1։ Գլ. ժթ. 21։
հ Սաղ. լէ. 23։ Գլ. ի. 24։ Երեմ. ժ. 23։
ձ Ղև. ժթ. 36։ Գլ. ժա. 1։
ղ Գլ. իե. 5։ իթ. 14։

Ն. Ք. ԳՌ. ԻՐ 1000

Թոռը արդարութեամբ կը հաստատուի ։

ժԳլ. ժգ. 35 ։ իբ. 11 ։

13 [ժ]Արդար շրթունքները թագաւորներուն հաճելի են . ու շիտակ խօսողը կը սիրեն ։

իԳլ. ժթ. 12 ։ ի. 2 ։

14 [ի]Թագաւորին բարկութիւնը մահուան դեսպաններու պէս է . բայց իմաստուն մարդը զանիկայ կ'իջեցընէ ։

լԳլ. ժթ. 12 ։

15 Թագաւորին երեսին լոյսը կեանք է , ու [լ]անոր հաճութիւնը [խ]վերջի անձրեւին ամպին պէս է ։

խՅոբ. իթ. 23 ։ Զաք. ժ. 1 ։

ծԳլ. ը. 11, 19 ։

16 [ծ]Իմաստութիւն ստանալը ոսկիէն որչափ աղէկ է . և հանճար վաստըկիլը արծաթէն աւելի ընտիր է ։

17 Ուղիղներուն մեծ ճամբան՝ չարութենէ հրաժարիլն է . իր ճամբուն զգուշութիւն ընողը իր հոգին կը պահէ ։

կԳլ. ժա. 2 ։ ժէ. 19 ։ ժր. 12 ։

18 [կ]Կոտորածին առջեւէն՝ հպարտութիւն , ու կործանման առջեւէն՝ ամբարտաւանութեան ոգին կ'երթայ ։

19 Խոնարհներուն հետ խոնարհ ըլլալը՝ հպարտներուն հետ աւար բաժնելէն աղէկ է ։

20 Գործքի մէջ խելացութեամբ վարուողը բարիք կը գտնէ ։ ու [հ]Տէրոջը ապաւինողը երանելի է ։

հՍաղ. բ. 12 ։ լդ. 8 ։ ճիե. 1 ։ Ես. լ. 18 ։ Երեմ. ժէ. 7 ։

21 Իմաստուն սիրտ ունեցողը խոհեմ կ'ըսուի . և շրթանց քաղցրութիւնը գիտութիւն կ'աւելցընէ ։

ձԳլ. ժգ. 14 ։ ժդ. 27 ։

22 [ձ]Խոհեմութիւնը՝ ունեցողին կենաց աղբիւր է . բայց յիմարներուն խրատը յիմարութիւն է ։

ղՍաղ. լէ. 30 ։ Տես Մատ. ժբ. 34 ։

23 [ղ]Իմաստունին սիրտը իր բերնին իմաստութիւն կու տայ , ու իր շրթունքներուն գիտութիւն կ'աւելցընէ ։

24 Վայելուչ խօսքերը մեղրի խորիսխին պէս է . հոգիին քաղցր՝ ու ոսկորներուն բժշկութիւն է ։

ճԳլ. ժդ. 12 ։

25 [ճ]Ճամբայ կայ որ մարդուն շիտակ կ'երեւնայ , բայց անոր վախճանը մահուան ճամբաներն է ։

մՏես գլ. Թ. 12 ։ Փող. Զ. 7 ։

26 [մ]Աշխատող անձը իրեն համար կ'աշխատի . քանզի իր բերանը կը պահանջէ իրմէ ։

27 Անօրէն մարդը չարութիւն կը փորէ , ու անոր շրթունքներուն վրայ իբր թէ այրող կրակ մը կայ ։

յԳլ. զ. 14, 19 ։ ժե. 18 ։ իզ. 21 ։ իթ. 22 ։

28 [յ]Ծուռ մարդը կռիւ կը հանէ , և [ն]քսուն՝ մտերիմ բարեկամները կը զատէ ։

նԳլ. ժէ. 9 ։

շԳլ. ա. 10, ձ ։

29 Անօրէն մարդը [շ]իր ընկերը կը խաբէ , ու զանիկայ գէշ ճամբաներ կը տանի .

30 Նենգութիւններ մտածելու համար՝ աչքերը կը գոցէ , և շրթունքները խածնելով՝ չարութիւնը կը կատարէ ,

ոԳլ. ի. 29 ։

չԳլ. ժթ. 11 ։

31 [ո]Մազի ճերմկութիւնը փառաց պսակ է , թէ որ անիկայ արդարութեան ճամբուն մէջ գտնուի ։

32 [չ]Երկայնամիտ մարդը հզօր մարդէն աղէկ է , ու իր ոգին զսպողը՝ քաղաք առնողէն ։

33 Վիճակը ծոցը կը ձգուի . բայց անոր ամէն կարգադրութիւնը Տէրոջմէ է ։

## ԳԼ. ԺԷ

պԳլ. ժե. 17 ։

1 Աղէկ է [պ]պատառ մը չոր հաց խաղաղութիւնով , քան թէ տուն մը լեցուն զոհեր՝ կռիւով ։

ջԳլ. ժ. 5 ։ ժթ. 26 ։

2 Խոհեմ ծառան՝ [ջ]նախատինք բերող որդիին կ'իշխէ , ու եղբարց մէջ ժառանգութեան բաժին կ'առնէ ։

ռՍաղ. իզ. 2 ։ Գլ. իէ. 21 ։ Երեմ. ժէ. 10 ։ Մաղ. գ. 3 ։

3 [ռ]Արծաթի համար հալոց , և ոսկիի համար քուրայ կայ . բայց սիրտերը փորձողը Տէրն է ։

4 Չար մարդը անիրաւին շրթանցը մտիկ կ'ընէ , ու ստախօսը վնասակար լեզուին ական կը դնէ ։

սԳլ. ժդ. 31 ։

վՅոբ. լա. 29 ։ Աբդ. 12 ։

5 [ս]Աղքատը ծաղր ընողը՝ անոր Ստեղծիչը կ'անարգէ , և [վ]ձախորդութեան վրայ ուրախացողը՝ անպատիժ պիտի չմնայ ։

տՍաղ. ճիէ. 3 ։ ճիը. 3 ։

6 [տ]Որդւոց որդիները՝ ծերերուն պսակն է , և որդւոց պարծանքը՝ իրենց հայրերն են ։

7 Ընտիր խօսքը անզգամին չվայլեր . որչափ աւելի ստախօս շրթունքը ազնուականին ։

րԳլ. ժը. 16 ։ ժթ. 6 ։ * Կամ՝ ընդունողին . Եբր . իր տիրոջը

8 [ր]Պարգեւը՝ *գործածողին առջեւ պատուական գոհարի պէս է , ուր որ դառնայ՝ յաջողութիւն կը գտնէ ։

ցԳլ. ժ. 12 ։

ւԳլ. ժզ. 28 ։

9 [ց]Յանցանքը ծածկողը բարեկամութիւն կը փնտռէ . բայց [ւ]զանիկայ պատմողը՝ մտերիմ բարեկամները կը զատէ ։

10 Խոհեմ մարդուն աւելի կ'ազդէ մէկ յանդիմանութիւնը , քան թէ հարիւր գաւազանի հարուած՝ յիմարին ։

11 Չար մարդը միշտ ապստամբութիւն կը փնտռէ , ու անոր խիստ պատգամաւոր կը խրկուի ։

փՈվս. ժգ. 8 ։

12 Աւ [փ]աղէկ է ձագերը գողցուած արջուն առջեւ ելլել , քան թէ յիմարի մը՝ անոր յիմարութեան ատենը ։

քՍաղ. ծթ. 4, 5 ։ Երեմ. ժը. 20 ։ Տես Հռով. ժբ. 17 ։ Ա Թես. ե. 15 ։ Ա Պետ. գ. 9 ։

13 Ո՛վ որ [ք]աղէկութեան փոխարէն չարիք կը հատուցանէ , չարիքը անոր տունէն պակաս պիտի չըլլայ ։

օԳլ. ի. 3 ։ Ա Թես. դ. 10 ։

14 Կռիւին սկզբնաւորութիւնը՝ ջուրին արձակմանը կը նմանի . ուրեմն [օ]վէճը չըռընկած՝ ետ քաշուէ ։

ֆԵլ. իգ. 7 ։ Գլ. իդ. 24 ։ Ես. ե. 23 ։

15 [ֆ]Ամբարիշտը արդարացընողը՝ և արդարը ամբարիշտ հանողը՝ երկուքն ալ Տէրոջը առջեւ պիղծ են ։

16 Իմաստութիւնը ծախու առնելու գինը՝ ի՞նչ օգուտ ունի յիմարին ձեռքը, որովհետև * խելք չունի ։
17 ծ Բարեկամը ամէն ատեն կը սիրէ, ու եղբայրը նեղութեան օրին համար ծնած է ։
18 կ Պակասամիտ մարդը ձեռքը կու տայ, ու իր բարեկամին † համար երաշխաւոր կ'ըլլայ ։
19 Կռիւ սիրողը՝ յանցանք կը սիրէ . հ իր դուռը բարձրացնողը՝ կործանումը կը փնտռէ ։
20 Ծուռ սիրտ ունեցողը աղէկութիւն չգտներ, ու ձ նենգաւոր լեզուով մարդը՝ չարիքի մէջ կ'իյնայ ։
21 ղ Յիմարը ծնանողը տրտմութիւն կը կրէ, և անզգամին հայրը չուրախանար ։
22 ճ Ուրախ սիրտը դեղի պէս օգտակար է . մ բայց կոտրած սիրտը ոսկորները կը չորցնէ ։
23 Անօրէն մարդը ուրիշին ծոցէն կաշառք կ'առնէ, յ որ արդարութեան ճամբաները ծռէ ։
24 ն Իմաստութիւնը խոհեմ մարդուն առջևն է . բայց յիմարին աչքերը՝ երկրին ծայրերն են ։
25 շ Յիմար տղան՝ իր հօրը տրտմութիւն, ու զինքը ծնանողին դառնութիւն կ'ըլլայ ։
26 ո Աղէկ չէ արդարին տուգանք առնելը, ‡ ու իշխանները ծեծելը՝ իրաւունքին համար ։
27 չ Իր խօսքերը զսպողը իմաստուն է, ու երկայնամիտ մարդը հանճարեղ է ։
28 պ Յիմարը անգամ թէ որ լուռ կենայ, իմաստուն՝ ու իր շրթունքները գոցողը՝ հանճարեղ կը սեպուի ։

ԳԼ. ԺԸ

1 ‖ Ինքնահաճոյ մարդը իր ցանկութիւնը կը փնտռէ և § ամէն խորհուրդի դէմ կը կենայ ։
2 Յիմարը՝ խոհեմութենէ չախորժեր . հապա իր սրտին մէջը եղածը յայտնել կ'ուզէ ։
3 Երբոր ամբարիշտը գայ, անարգութիւն ալ կու գայ, ու նախատինքի հետ խայտառակութիւն ։
4 ջ Մարդուն բերնին խօսքերը խորունկ ջուրեր են . ռ իմաստութեան աղբիւրը առատաբուղխ գետ է ։
5 ս Դատաստանի մէջ՝ արդարը սուտ հանելու համար, ամբարշտին աչառութիւն ընելը աղէկ չէ ։
6 Անմիտ մարդուն շրթունքները կռիւի մէջ կը մտնեն, ու անոր բերանը ծեծը կը կանչէ ։
7 վ Անմիտ մարդուն բերանը իրեն կործանումն է, և անոր շրթունքները իր անձին որոգայթ է ։
8 Քսու մարդուն խօսքերը՝ քաղցր պատառներու պէս են, ու անոնք մինչև փորին շտեմարանները կ'իջնեն ։
9 Ան որ իր գործքին մէջը թոյլ է, շռայլ մարդուն եղբայրն է ։
10 Տէրոջը անունը ամուր աշտարակ է . արդարը անոր կը դիմէ, ու ապահով ապաստանարան կ'ունենայ ։
11 Հարուստին ստացուածքը իր ամուր քաղաքն է, ու անոր երևակայութեանը մէջ՝ բարձր բերդի պէս է ։
12 Կոտորածէն առաջ մարդուն սիրտը կը հպարտանայ . բայց փառաց առջևէն խոնարհութիւնը կ'երթայ ։
13 Ո՛վ որ խօսք մը չլսած պատասխան կու տայ, յիմարութիւն ու նախատինք է անոր ։
14 Մարդուն հոգին իր հիւանդութեանը կը համբերէ . բայց վիրաւորուած հոգին ո՞վ կրնայ ⁂ մխիթարել ։
15 Խոհեմին սիրտը գիտութիւն կը վաստըկի . և իմաստուններուն ականջը գիտութիւն կը փնտռէ ։
16 Մարդուն ընծան անոր ճամբայ կը բանայ, ու զանիկայ մեծերուն առջևը կը տանի ։
17 Իր դատը առաջ ըսողը իրաւունք ունեցող կ'երևնայ . բայց երբոր իր †† ոսոխը գայ, զանիկայ կը քննէ ։
18 Վիճակը վէճերը կը դադրեցնէ, ու զօրաւորներուն մէջտեղը որոշում կ'ընէ ։
19 Վշտացած եղբայր մը ամուր քաղաքէն անառիկ է, և անոր վէճերը՝ բերդի մը նիգերուն կը նմանի ։
20 Մարդը իր բերնին պտուղէն իր փորը կը կշտացնէ, ու իր շրթունքներուն արդիւնքէն կը կշտանայ ։
21 Մահը ու կեանքը լեզուին ձեռքն է, և զանիկայ սիրողները անոր պտուղը կ'ուտեն ։
22 Աղուոր կնիկ գտնողը՝ բարիք կը գտնէ, ու Տէրոջմէ շնորհք մը կ'առնէ ։
23 Աղքատը աղաչելով կը խօսի, բայց հարուստը խիստ պատասխան կու տայ ։
24 Բարեկամներ ունեցող մարդը բարեկամութիւն ընելու է . ու եղբօրմէ աւելի հաստատ բարեկամ կայ ։

ԳԼ. ԺԹ

1 Իր կատարելութեանը մէջ քալող աղքատը՝ նենգաւոր շրթունք ունեցող յիմարէն աղէկ է ։

Ն. Ք. ԳՌ. իրր 1000
* Կամ՝ փափաք
ծ Հռութ. ա. 16 ; Գլ. ԺԸ. 24 ։
կ Գլ. Զ. 1 ; ԺԱ. 15 ։
† Եբր. առջևը
հ Գլ. ԺԶ. 18 ։
ձ Յակ. գ. 8 ։
ղ Գլ. Ժ. 1 ; ԺԹ. 13 ; Հմր. 25 ։
ճ Գլ. ԺԲ. 25 ; ԺԵ. 13, 15 ։
մ Սաղ. ԻԲ. 15 ։
յ Ել. ԻԳ. 8 ։
ն Գլ. ԺԴ. 6 ; Ժող. Բ. 14 ; Ը. 1 ։
շ Գլ. Ժ. 1 ; ԺԵ. 20 ; ԺԹ. 13 ; Հմր. 21 ։
ո Հմր. 15 ; Գլ. ԺԸ. 5 ։
‡ Կամ՝ ո՛չ ալ իշխանները ուղղութեան մէջ ծեծել իրաւունքէն աւելի ։
չ Յակ. ա. 19 ։
պ Յոբ. ԺԳ. 5 ։
‖ Եբր. Զատուող
§ Կամ՝ ամէն բանի կը խառնուի ։
ջ Գլ. Ժ. 11 ; Ի. 5 ։
ռ Սաղ. ՃԸ. 2 ։
ս Ղև. ԺԹ. 15 ; Բ Օր. ա. 17 ; ԺԶ. 19 ; Գլ. ԻԴ. 23 ; ԻԸ. 21 ։
վ Գլ. Ժ. 14 ; ԺԲ. 13 ; ԺԳ. 3 ; Ժող. Ժ. 12 ։

Ն. Ք. ԳՌ. իրր 1000
Գլ. ԺԲ. 18 ; Իզ. 22 ։
Գլ. ԻԸ. 24 ։
Բ Թագ. ԻԲ. 3, 51 ; Սաղ. ԺԸ. 2 ; ԻԷ. 1 ; ԿԱ. 3, 4 ; ՂԱ. 2 ; Ճխդ. 2 ։
Գլ. Ժ. 15 ։
Գլ. ԺԱ. 2 ; ԺԶ. 33 ; ԺԹ. 18 ։
Յով. Է. 51 ։
⁂ Կամ՝ տանիլ . Եբր. վերցնել ։
Ծն. ԼԲ. 20 ; Ա Թագ. ԻԵ. 27 ; Գլ. ԺԷ. 8 ; Իա. 14 ։
†† Եբր. ընկերը
Գլ. ԺԲ. 14 ; ԺԳ. 2 ։
Մատթ. ԺԲ. 37 ։
Գլ. ԺԹ. 14 ; Լա. 10 ։
Յակ. Բ. 3 ։
Գլ. ԺԷ. 17 ։
Գլ. Ի. 6 ։

Ն. Ք. ԴՔ. իրր 1000

բ Առակ. ԼԷ. 7 ։
գ Գլ. ԺԴ. 20 ։
դ Հմր 9 ։ Եւ. ԻԳ. 1 ։ բ Օր. ԺԹ. 16, 19 ։ Գլ. Զ. 19 ։ Իա. 28 ։
ե Գլ. ԻԹ. 26 ։
* Կամ՝ իշխանին
զ Գլ. ԺԷ. 8 ։ ԺԸ. 16 ։ Իա. 14 ։
է Գլ. ԺԴ. 20 ։
ը Առակ. ԼԸ. 11 ։
† Կամ՝ անոնց ետեւէն կ'իյնայ խօսքերով, բայց անոնք չեն գտնուիր ։
թ Գլ. ԺԶ. 20 ։
ժ Հմր 5 ։
ի Գլ. Լ. 22 ։ Ժող. Ժ. 6, 7 ։
լ Գլ. ԺԴ. 29 ։ Յակ. Ա. 19 ։
խ Գլ. ԺԶ. 32 ։
ծ Գլ. ԺԶ. 14, 15 ։ Ի. 2 ։ ԻԸ. 15 ։
կ Ովս. ԺԴ. 5 ։
հ Գլ. Ժ. 1 ։ ԺԵ. 20 ։ ԺԷ. 21, 25 ։
ձ Գլ. ԻԱ. 9, 19 ։ ԻԵ. 15 ։
ղ բ Կոր. ԺԲ. 14 ։
ճ Գլ. ԺԸ. 22 ։
մ Գլ. Զ. 9 ։
յ Գլ. Ժ. 4 ։ Ի. 13 ։ ԻԳ. 21 ։
ն Ղուկ. Ժ. 28 ։ ԺԱ. 28 ։
շ Գլ. ԻԲ. 27 ։ Ժող. ԺԱ. 1 ։ Մատ. Ժ. 42 ։ ԻԵ. 40 ։ բ Կոր. Թ. 6, 7, 8 ։ Եբր. Զ. 10 ։
ո Գլ. ԺԳ. 24 ։ ԻԳ. 13 ։ ԻԹ. 17 ։
չ Առակ. ԼԷ. 37 ։
պ Յոբ. ԻԳ. 13 ։ Առակ. ԼԳ. 10, 11 ։ Գլ. ԺԶ. 1, 9 ։ Ես. ԺԴ. 26, 27 ։ Իզ. 10 ։ Գործ. Ե. 39 ։ Եբր. Զ. 17 ։

2 Հոգիին տգիտութիւնը աղէկ չէ, ու ոտքերովը արտորացողը կը սահի ։
3 Մարդուն յիմարութիւնը՝ անոր ճամբան կ'աւրէ, բև անոր սիրտը Տէրոջը դէմ տրտունջ կ'ընէ ։
4 գՀարստութիւնը շատ բարեկամներ կ'աւելցնէ. բայց աղքատը իր բարեկամէն կը զատուի ։
5 դՍուտ վկան անպատիժ պիտի չմնայ, ու ստութիւններ խօսողը պիտի չազատի ։
6 եՇատերը *առատաձեռն մարդուն" հաճութիւնը կը փնտռեն, ու զամէն մէկը պարգեւատու մարդուն բարեկամ կ'ըլլայ ։
7 էԱղքատին բոլոր եղբայրները անկէ կը զզուին. անոր բարեկամները՝ ալ աւելի ըանկէ կը հեռանան. անիկայ †ոչինչ խօսքերու ետեւէ կ'իյնայ" ։
8 Խելք վաստըկողը իր հոգին կը սիրէ. իմաստութիւն պահողը թբարիք պիտի գտնէ ։
9 ժՍուտ վկան անպատիժ պիտի չմնայ, ու ստութիւններ խօսողը պիտի կորսուի ։
10 Յիմարին՝ փափկութիւն չվայլեր. որչափ աւելի իծառայի մը՝ իշխաններու վրայ իշխել ։
11 լՄարդուն խոհեմութիւնը՝ անոր բարկութիւնը կը զսպէ, խև յանցանք ներելը՝ անոր պարծանք է ։
12 ծԹագաւորին բարկութիւնը՝ առիւծի կորիւնին մռնչիւնին կը նմանի, իսկ անոր հաճութիւնը՝ խոտի վրայի կցօղին պէս է ։
13 հԱնմիտ տղան իր հօրը թշուառութիւնն է, ձու կնկան կռիւները՝ շարունակ կաթիլներու պէս են ։
14 ղՏունը ու ստացուածքը՝ հայրերէն հասած ժառանգութիւն է. բայց ճխոհեմ կնիկը՝ Տէրոջմէ է ։
15 մԾուլութիւնը խորունկ քուն կը բերէ, և թոյլ մարդը յանօթի կը մնայ ։
16 նՊատուիրանքը պահողը իր հոգին կը պահէ. իր ճամբաները անարգողը պիտի մեռնի ։
17 շԱղքատին ողորմութիւն ընողը՝ Տէրոջը փոխ կու տայ. ու Անիկայ անոր հատուցում պիտի ընէ ։
18 ոՔանի որ յոյս կայ՝ տղադ խրատէ, և անոր աղաղակին ականջ մի՛ դներ ։
19 Խիստ բարկացող մարդը վնաս կը կրէ. վասն զի թէ որ անգամ մը ազատես՝ նորէն ընելու ես ։
20 Խրատը լսէ, և կրթութիւնը ընդունէ, որ չքու ետքի ատենդ իմաստուն ըլլաս ։
21 պՄարդուն սրտին մէջը շատ դիտաւորութիւններ կան. բայց Տէրոջը խորհուրդը հաստատուն պիտի մնայ ։
22 Մարդուն ողորմածութիւնը՝ իր փառքն է. ու աղքատը ստախօսէն աղէկ է ։
23 ջՏէրոջը երկիւղը կենաց պատճառ է, և զանիկայ ունեցողը կուշտ կը պառկի, ու ձախորդութեան չհանդիպիր ։
24 ռԾոյլը իր ձեռքը ամանին մէջը կը խոթէ, ու զանիկայ իր բերանը անգամ չդարձըներ ։
25 սԾաղր ընողը ծեծէ, ու միամիտը վխելացի կ'ըլլայ, և թէ որ տիմաստունը յանդիմանես, հանճարը կը հասկընայ ։
26 Իր հայրը կործանողը, ու իր մայրը վռընտողը՝ րամօթ ու նախատինք բերող տղայ մըն է ։
27 Որդեակ իմ՝ ետ կեցիր անխրատը մտիկ ընելէն, որ քեզ իմաստութեան խօսքերէն կը խոտորեցնէ ։
28 Չար վկան արդարութիւնը ծաղր կ'ընէ, ու ցամբարիշտներուն բերանը անիրաւութիւն կը կլլէ ։
29 Ծաղր ընողներուն համար դատաստաններ, և ւանմիտներուն կռնակին համար՝ ծեծեր պատրաստուած են ։

ԳԼ. Ի

1 Գինին փծաղր ընող է, ու ցքին կռիւ հանող, և ով որ ասոնց անձնատուր կ'ըլլայ, իմաստուն չըլլար ։
2 բԹագաւորին ահը՝ առիւծի կորիւնին մռնչիւնին պէս է, ու զանիկայ բարկացընողը՝ գիր անձին վնաս կ'ընէ ։
3 դԿռիւէն ետ կենալը մարդուն փառք է. բայց ամէն յիմար կըռուասէր է ։
4 եԾոյլը՝ Ձմեռ է, ըսելով՝ գետինը չհերկեր. Ուստի հունձքի ատենը պիտի մուրայ, ու բան մը պիտի չունենայ ։
5 էՄարդու մը սրտին մէջի խորհուրդը խորունկ ջուրերու պէս է. բայց խելացի մարդը զանիկայ կը հանէ ։
6 ըՄարդոցմէ շատերը իրենց բարերարութիւնը կը հրատարակեն. բայց թհաւատարիմ մարդ մը ո՞վ կրնայ գտնել ։
7 ժԻր անարատութեանը մէջ քալողը արդար է. իանոր որդիները իր ետեւէն երջանիկ պիտի ըլլան ։
8 լԴատաստանի աթոռը նստող թագաւորը իր աչքերովը ամէն չարիք կը ցրուէ ։
9 խՈ՞վ կրնայ ըսել թէ՝ Իմ սիրտս սրբեցի, իմ մեղքէս մաքրուեցայ ։

Ն. Ք. ԴՔ. իրր 1000

ջ Տիմ. Դ. 8 ։
ռ Գլ. ԺԵ. 19 ։ ԻԶ. 13, 15 ։
ս Գլ. ԻԱ. 11 ։
վ բ Օր. ԺԳ. 11 ։
տ Գլ. Թ. 8 ։
ր Գլ. ԺԷ. 2 ։
ց Յոբ. ԺԵ. 16 ։ Ի. 12, 13 ։ ԼԴ. 7 ։
ւ Գլ. Ժ. 13 ։ ԻԶ. 3 ։
փ Ծն. Թ. 21 ։ Գլ. ԻԳ. 29, 30 ։ Ես. ԻԸ. 7 ։ Ովս. Դ. 11 ։
բ Գլ. ԺԴ. 14 ։ ԺԹ. 12 ։
գ Գլ. Ը. 36 ։
դ Գլ. ԺԷ. 14 ։
ե Գլ. Ժ. 4 ։ ԺԹ. 24 ։
զ Գլ. ԺԹ. 15 ։
է Գլ. ԺԸ. 4 ։
ը Գլ. ԻԵ. 14 ։ Մատ. Զ. 2 ։ Ղուկ. ԺԸ. 11 ։
թ Առակ. ԺԲ. 1 ։
ժ բ Կոր. Ա. 12 ։
ի Առակ. ԼԷ. 26 ։ ՃԺԲ. 2 ։
լ Հմր 26 ։
խ Գ Թագ. Ը. 46 ։ բ Մն. Զ. 36 ։ Յոբ. ԺԴ. 4 ։ Առակ. ԾԱ. 5 ։ Ժող. Է. 20 ։ Ա Կոր. Դ. 4 ։ Ա Յովհ. Ա. 8 ։

Ն. Ք. գՔ. իբր 1000

10 ծ Երկու տեսակ կշռաքար, երկու տեսակ *չափ՝ հաւասարապէս Տէրոջը առջեւ պիղծ են։
11 Մինչեւ անգամ տղու մը վարքին մաքրութիւնը եւ ուղղութիւնը՝ ի անոր գործքերէն կը հասկցուի։
12 ճ Լսող ականջը ու տեսնող աչքը՝ երկուքն ալ Տէրը ստեղծեր է։
13 յ Քունը մի՛ սիրեր, որ չըլլայ թէ աղքատանաս. աչքերդ բաց, որ հացով կշտանաս։
14 Ծախու առնողը՝ Գէշ է, գէշ է, կ'ըսէ. բայց երբոր երթայ, անատենը կը պարծենայ։
15 Ոսկի ու շատ գոհար կը գտնուի. բայց ղ գիտութեան շրթունքները մեծագին զարդեր են։
16 ձ Օտարականի մը երաշխաւոր եղողին զգեստը առ, եւ օտար կնկան համար երաշխաւոր եղողէն գրաւ առ։
17 մ Ստութեան հացը մարդուն ախորժելի է. բայց ետքը անոր բերանը խիճով պիտի լեցուի։
18 յ Դիտաւորութիւնը խորհրդով կը հաստատուի. ն ուստի խոհեմութեամբ պատերազմ ըրէ։
19 շ Բանսարկութեան պտըտողը գաղտնիքը կը յայտնէ. ուրեմն ո շրթունքներովը շողոքորթութիւն ընողին հետ հաղորդակցութիւն մի՛ ըներ։
20 չ Ո՛վ որ իր հայրը ու մայրը կ'անիծէ, պ անոր ճրագը մութ խաւարի մէջ պիտի մարի։
21 ջ Կայ ժառանգութիւն՝ որ սկիզբը արտորնօք կ'առնուի, ռ բայց անոր վերջը պիտի չօրհնուի։
22 ս Չարութեան փոխարէնը հատուցանեմ՝ մի՛ ըսեր. վ Տէրոջը սպասէ, ու անիկայ քեզ պիտի ազատէ։
23 տ Երկու տեսակ կշռաքարը Տէրոջը առջեւ պիղծ է, ու նենգաւոր կշիռքը աղէկ չէ։
24 ր Մարդուն քայլերը Տէրոջմէն է. ուստի մարդը իր ճամբան ի՞նչպէս հասկընայ։
25 † Անխորհրդաբար բան մը նուիրելը", եւ ց ուխտ ընելէն ետքը քննութիւն ընելը՝ մարդուն որոգայթ մըն է։
26 ւ Իմաստուն թագաւորը ամբարիշտները կը ցրուէ, ու անիւը անոնց վրայ կը դարձնէ։
27 փ Մարդուն հոգին՝ Տէրոջը լոյսն է, սրտին բոլոր շտեմարանները կը քննէ։
28 ք Ողորմութիւնը ու ճշմարտութիւնը՝ թագաւորը կը պահեն. անիկայ ալ իր աթոռը ողորմութեամբ կը հաստատէ։
29 Երիտասարդներուն զարդը անոնց ոյժն է, եւ օ ծերոց փառքը ալեւորութիւնն է։
30 Վէրքի նշանները, ու փորի շտեմարանները հասնող հարուածները՝ ‡ չար մարդուն" մաքրողական դեղ են։

ծ Բ Օր. իե. 13, և Հմր 23. Գլ. ժա. 1. ժզ. 11. Միք. զ. 10, 11.
* Եբր. արդուն
ի Մատ. է. 16.
ճ Ել. դ. 11. Սաղ. ղդ. 9.
յ Գլ. զ. 9. ժբ. 11. ժթ. 15. Հռով. ժբ. 11.
ղ Յոբ. իը. 12, 16, 17, 18, 19. Գլ. գ. 15. ը. 11.
ձ Գլ. իբ. 26, 27. իէ. 13.
մ Գլ. թ. 17.
յ Գլ. ժե. 22. իդ. 6.
ն Ղուկ. ժդ. 31.
շ Գլ. ժա. 13.
ո Հռով. ժզ. 18.
չ Ել. իա. 17. Ղեւ. ի. 9. Մատ. ժե. 4.
պ Յոբ. ժը. 5, 6. Գլ. իդ. 20.
ջ Գլ. իը. 20.
ռ Ամբ. բ. 6.
ս Բ Օր. լբ. 35. Գլ. ժէ. 13. իդ. 29. Հռով. ժբ. 17, 19. Ա Թես. ե. 15. Ա Պետ. գ. 9.
վ Բ Թագ. ժզ. 12.
տ Հմր 10.
ր Սաղ. լէ. 23. Գլ. ժզ. 9. Երեմ. ժ. 23.
† Կամ՝ Սուրբ բան մը կլլելը.
ց Ժող. ե. 4, 5.
ւ Սաղ. ճա. 5, և Հմր 8.
փ Ա Կոր. բ. 11.
ք Սաղ. ճա. 1. Գլ. իթ. 14.

## ԳԼ. ԻԱ

1 Թագաւորին սիրտը ջուրի վտակներու պէս է Տէրոջը ձեռքին մէջ. զանիկայ ո՛ր կողմը ուզէ՝ կը դարձնէ։
2 ա Մարդուն ամէն ճամբան՝ իրեն ուղիղ կ'երեւնայ. բ բայց Տէրը սիրտերը կը կշռէ։
3 գ Արդարութիւն եւ իրաւունք գործելը՝ զոհէն աւելի ընդունելի է Տէրոջը։
4 դ Աչաց ամբարտաւանութիւնը եւ սրտի հպարտութիւնը եւ ամբարշտաց ‖ լոյսը մեղք է։
5 ե Աշխատասէր մարդուն խորհուրդները՝ միայն առատութիւն կը բերեն. բայց ամէն արտորացող՝ միայն կարօտութիւն կը բերէ։
6 զ Սուտ լեզուով գանձեր վաստըկիլը՝ մահը փնտռողներուն հալածած ունայնութիւնն է։
7 Ամբարիշտներուն բռնութիւնը զանոնք պիտի կորսնցընէ. վասն զի իրաւունք ընել չեն ուզեր։
8 Երբոր մարդուն ճամբան ծուռ է, կը խոտորի. բայց մաքուր եղողին գործքը ուղիղ է։
9 է Աղէկ է տանիքի մը անկիւնը բնակիլ քան թէ կռուասէր կնկան հետ մեծ տան մէջ։
10 ը Ամբարիշտ մարդուն հոգին չարութեան կը ցանկայ, ու անոր ընկերը անոր առջեւ շնորհք չըգտներ։
11 թ Երբ որ ծաղր ընողը տուգանքի հանդիպի, միամիտը իմաստուն կ'ըլլայ, եւ թէ որ իմաստունը խրատուի, գիտութիւն կը ստանայ։
12 Արդարը խոհեմութեամբ ամբարշտին տունը կը դիտէ, երբոր ամբարիշտները չարութեան համար կը կործանին։
13 ժ Ո՛վ որ աղքատին աղաղակը չըլսելու համար իր ականջը կը գոցէ, ինքն ալ պիտի աղաղակէ, ու իրեն լսող պիտի չըլլայ։
14 ի Գաղտնի պարգեւը բարկութիւնը կ'իջեցընէ, եւ ծոցը դրուած ընծան՝ սաստիկ կատաղութիւնը կը դադրեցնէ։
15 Իրաւունք ընելը արդարին ուրախութիւն է. լ բայց անիրաւութիւն ընողներուն տանջանք է։
16 Խոհեմութեան ճամբայէն մոլորող մարդը՝ մեռելներուն ժողովքին մէջը կ'իջնէ։

Ն. Ք. գՔ. իբր 1000
օ Գլ. ժզ. 31.
‡ Կամ՝ չարութեան դէմ
ա Գլ. ժզ. 2.
բ Գլ. իդ. 12. Ղուկ. ժզ. 15.
գ Ա Թագ. ժե. 22. Սաղ. ծ. 8. Գլ. ժե. 8. Եսա. ա. 11. և Ովս. զ. 6. Միք. զ. 7, 8.
դ Գլ. զ. 17.
‖ Կամ՝ մշակութիւնը
ե Գլ. ժ. 4. ժգ. 4.
զ Գլ. ժ. 2. ժգ. 11. ի. 21. Բ Պետ. բ. 3.
է Հմր 19. Գլ. ժթ. 13. իե. 24. իէ. 15.
ը Տես Յակ. դ. 5.
թ Գլ. ժթ. 25.
ժ Մատ. է. 2. ժը. 30. և Յակ. բ. 13.
ի Գլ. ժէ. 8, 23. ժը. 16.
լ Գլ. ժ. 29.

17 Ուրախութիւն սիրողը՝ կարօտութեան մէջ կ'իյնայ . գինին ու եղը սիրողը չհարստանար ։
18 ԽԱմբարիշտը արդարին համար, ու անօրէնը ուղիղներուն համար փրկանք կ'ըլլայ ։
19 ԾԱղէկ է անապատ տեղ մը բնակիլ՝ քան թէ կռուասէր ու բարկացող կնկան հետ ։
20 ԿԻմաստունին բնակարանին մէջը ցանկալի գանձ ու եղ կը գտնուի . բայց անմիտ մարդը *իր ունեցածը" կը կլլէ ։
21 ՀԱրդարութեան ու ողորմածութեան հետեւողը՝ կեանք, արդարութիւն և փառք պիտի գտնէ ։
22 ՁԻմաստունը զօրաւորներուն քաղաքը կ'ելլէ, և անոնց ապաւինած ամրութիւնը կը փլցընէ ։
23 ՂԻր բերանը ու լեզուն պահողը՝ իր հոգին նեղութիւններէն կը պահէ ։
24 Հպարտութեամբ և բարկութեամբ վարուող մարդուն անունը՝ հպարտ և յանդուգն ծաղր ընող է'ըսուի ։
25 ՃԾոյլին ցանկութիւնը՝ զանիկայ կը մեռցընէ . վասն զի անոր ձեռքերը աշխատիլ չեն ուզեր ։
26 Անիկայ ամէն օր սաստիկ կը ցանկայ . իսկ Մարդարը կու տայ, ու չխնայեր ։
27 ՅԱմբարիշտներուն զոհը պիղծ է, մանաւանդ երբոր զանիկայ չար դիտաւորութեամբ կը մատուցանեն ։
28 ՆՍուտ վկան պիտի կորսուի . բայց լսող մարդը †հաւատարմութեամբ պիտի խօսի ։
29 Ամբարիշտ մարդը իր երեսը կը պնտցընէ . բայց ուղիղը իր ճամբաները կը շիտկէ ։
30 ՇԻմաստութիւն, հանճար կամ խորհուրդ մը չկայ, որ Տէրոջը դէմ կենայ ։
31 ՈՊատերազմի օրուան համար՝ ձին կը պատրաստուի . բայց ՉՓրկութիւնը Տէրոջմէ է ։

ԳԼ. ԻԲ

1 ՊԲարի անունը շատ հարստութիւնէն աւելի ընտիր է . ու շնորհքը արծաթէն ու ոսկիէն աղէկ է ։
2 ՋՀարուստը ու աղքատը իրարու կը հանդիպին . ՌԱնոնց ամէնը ըստեղծողը Տէրն է ։
3 ՍԽորագէտը չարիքը կը տեսնէ, ու կը զգուշանայ . բայց միամիտները առաջ կ'անցնին, ու վնաս կը կրեն ։
4 ՎԽոնարհութեան և Տէրոջը երկիւղին վախճանը՝ հարստութիւն, փառք ու կեանք է ։
5 ՏՓուշեր ու որոգայթներ կան ծուռ մարդուն ճամբուն մէջը . Իր հոգին պահողը՝ անոնցմէ հեռու կ'ըլլայ ։
6 ՐԿրթէ մանուկը ‡իր ճամբան սկսած ատենը", որ իր ծերութեան ատենն ալ անկէ չխոտորի ։
7 ՑՀարուստը աղքատներուն վրայ կը տիրէ, ու փոխ առնողը փոխ տուողին ծառայ կ'ըլլայ ։
8 ՒՉարութիւն ցանողը՝ ունայնութիւն կը հնձէ . և անոր բարկութեանը գաւազանը պիտի կորսուի ։
9 ՓԱղէկ աչք ունեցողը օրհնած կ'ըլլայ . վասն զի իր հացէն աղքատին կու տայ ։
10 ՔԾաղր ընողը թէ որ վռնտես, կռիւը կ'անցնի, ու վէճը և անարգանքը կը դադարի ։
11 ԽՍրտի մաքրութիւն սիրողին շրթունքներուն վրայ շնորհք կայ, ու թագաւորը անոր բարեկամ կ'ըլլայ ։
12 Տէրոջը աչքերը գիտութիւնը կը պաշտպանեն, և նենգ անօրէնին խօսքերը կ'աւրէ ։
13 ԾԾոյլը կ'ըսէ . Դուրսը առիւծ կայ, հրապարակին մէջը պիտի մեռցուիմ ։
14 ԿՕտար կիներուն բերանը խորունկ փոս է . ՀՏէրոջը ատելի եղողը հոն կ'իյնայ ։
15 Մանուկին սրտին մէջը՝ յիմարութիւնը կապուած է . Ձզանիկայ՝ խրատի գաւազանը կը հեռացընէ անկէ ։
16 Իր ստացուածքը շատցընելու համար աղքատին զրկանք ընողը, ու հարուստին տուողը՝ անշուշտ կարօտութեան կը հասնի ։
17 Ականջդ ծռէ, ու իմաստուններուն խօսքերը մտիկ ըրէ, և քու սիրտդ իմ գիտութեանս տուր .
18 Վասն զի թէ որ անոնք քու սրտիդ մէջը պահես, հաճելի բան է . անոնք քու շրթունքներուդ վրայ ալ պիտի հաստատուին ։
19 Ահա այսօր ես բաները քեզի իմացուցի . որպէս զի քու ապաւինութիւնդ Տէրոջը վրայ ըլլայ ։
20 Միթէ ես քեզի ‖շատ անգամ" խրատներով, ու գիտութեամբ չըգրեցի՞,
21 ՂՈր քեզի՝ ճշմարիտ խօսքերուն ստուգութիւնը սորվեցընեմ, Ճոր քեզի §հարցընողներուն՝ ճշմարիտ խօսքերով պատասխան տաս ։
22 ՄԱղքատը մի՛ կողոպտեր իր աղքատութեանը համար, Յու տնանկը ⁑դատաստանի մէջ մի՛ կոխեր .
23 ՆՎասն զի Տէրը անոնց իրաւունքը պիտի պաշտպանէ, և զանոնք

Ն. Ք. ԳՔ. իրր 1000

Խ Գլ. ԺԱ. 8 ։ Ես. ԽԳ. 3, 4 ։
Ծ Հմր 9 ։
Կ Սաղ. ՃԺԲ. 3 ։ Մատ. ԻԵ. 3, 4 ։
* Եբր. զանիկայ
Հ Գլ. ԺԵ. 9 ։ Մատ. Ե. 6 ։
Ձ Ժող. Թ. 14, 15 ։
Ղ Գլ. ԺԲ. 13 ։ ԺԳ. 3 ։ ԺԸ. 21 ։ Յակ. Գ. 2 ։
Ճ Գլ. ԺԳ. 4 ։
Մ Սաղ. ԼԷ. 26 ։ ՃԺԲ. 9 ։
Յ Սաղ. Ծ. 9 ։ Գլ. ԺԵ. 8 ։ Ես. ԿԶ. 3 ։ Երեմ. Զ. 20 ։ Ամով. Ե. 22 ։
Ն Գլ. ԺԹ. 5, 9 ։
† Կամ՝ յաւիտեան
Շ Ես. Ը. 9, 10 ։ Երեմ. Թ. 23 ։ Գործ. Ե. 39 ։
Ո Սաղ. Ի. 7 ։ ԼԳ. 17 ։ Ես. Լ. 1 ։
Չ Սաղ. Գ. 8 ։

Պ Ժող. Է. 1 ։
Ջ Գլ. ԻԹ. 13 ։ Տէս Կոր. ԺԲ. 21 ։
Ռ Յոբ. ԼԱ. 15 ։ Գլ. ԺԴ. 31 ։
Ս Գլ. ԺԴ. 16 ։ ԻԷ. 12 ։
Վ Սաղ. ՃԺԲ. 8 ։ Մատ. Գ. 33 ։

Ն. Ք. ԳՔ. իրր 1000

Տ Գլ. ԺԵ. 19 ։
Ր Յ Յօհ. Ե. 18 ։
Ց Եփե. Զ. 4 ։ Բ Տիմ. Գ. 15 ։
‡ Կամ՝ իր ճամբուն համեմատ,
Ւ Յակ. Բ. 6 ։
Փ Յոբ. Դ. 8 ։ Ովս. Ժ. 13 ։
Ք Բ Կոր. Թ. 6 ։
Ծ Ծն. ԻԱ. 9, 10 ։ Սաղ. ՃԱ. 5 ։
Խ Սաղ. ՃԱ. 6 ։ Գլ. ԺԶ. 13 ։
Ծ Գլ. ԻԶ. 13 ։
Կ Գլ. Բ. 16 ։ Ե. 3 ։ Է. 5 ։ ԻԳ. 27 ։
Հ Ժող. Է. 26 ։
Ձ Գլ. ԺԳ. 24 ։ ԺԹ. 18 ։ ԻԳ. 13, 14 ։ ԻԹ. 15, 17 ։
‖ Կամ՝ առաջուրմներ .
Ղ Ղուկ. Ա. 3, 4 ։
Ճ Տես Ա Պետ. Գ. 15 ։
§ Եբր. խրկողներուն՝
Մ Ել. ԻԳ. 6 ։ Յոբ. Լ. 16, 21 ։
Յ Զաք. Է. 10 ։ Մաղ. Գ. 5 ։
⁑ Եբր. դրանը
Ն Թագ. ԻԴ. 13 ։ ԻԵ. 39 ։ Սաղ. ԺԲ. 5 ։ ԼԵ. 1, 10 ։ ԿԸ. 5 ։ ՃԽ. 12 ։ ԳՂ. ԻԴ. 11 ։ Երեմ. ԾԱ. 36 ։

Ն. Ք. ԴՔ. Իրր 1000

կողոպտողներուն հոգին պիտի կողոպտէ ։
24 Բարկացող մարդուն հետ ընկերութիւն մի՛ ըներ, ու ցասկոտ մարդուն հետ մի՛ երթար.
25 Որ չըլլայ թէ անոր ճամբաները սորվիս, և քու հոգւոյդ որոգայթ վաստըկիս ։
26 Ձեռք տուողներէն մի՛ ըլլար, ո՛չ ալ պարտքի համար երաշխաւոր եղողներէն.
27 Թէ որ վճարելու կարողութիւն չունիս, ինչո՞ւ համար տակէդ քու անկողինդ առնեն ։
28 Չըլլայ որ տեղէն վերցընես ան վաղեմի սահմանին նշանը, որ քու հայրերդ դրեր են ։
29 Իր գործքին մէջ ժիր մարդ մը կը տեսնե՞ս, անիկայ թագաւորներուն առջևը պիտի կայնի. աննշան մարդոց առջևը պիտի չկայնի ։

Գլ. Զ. 1։ Ժա. 15։
Գլ. Ի. 16։
Օր. ԺԹ. 14։ ԻԷ. 17։ Գլ. ԻԴ. 10։

## ԳԼ. ԻԳ

1 Երբոր իշխանի հետ սեղան նստիս, առջևդ դրուածը աղէկ նայէ.
2 Ու թէ որ դուն ախորժակի տէր մարդ ես, կոկորդիդ վրայ դանակ դիր ։
3 Անոր աղնիւ կերակուրներուն մի՛ ցանկար. վասն զի անոնք խաբէութեան հաց են ։
4 Հարուստ ըլլալու մի՛ աշխատիր. քու *խորհուրդէդ ետ կեցիր ։
5 Աչք պիտի տնկե՞ս ան բանին՝ որ ոչինչ է. անիկայ անշուշտ իրեն թևեր կը շինէ, ու արծիւի պէս օդը կը թռչի ։
6 Չար աչք ունեցողին հացը մի՛ ուտեր, և անոր աղնիւ կերակուրներուն մի՛ ցանկար.
7 Վասն զի անիկայ՝ իր սրտին մէջը ինչպէս որ կը մտածէ, այնպէս է. Կե՛ր ու խմէ՛ կ'ըսէ քեզի. բայց անոր սիրտը քեզի հետ չէ ։
8 Կերած պատառդ պիտի փսխես, ու հաճելի խօսքերդ պիտի կորսընցընես ։
9 Յիմարին ականջներուն մի՛ խօսիր. քանզի քու խօսքերուդ իմաստութիւնը կ'անարգէ ։
10 Վաղեմի սահմանին նշանը տեղէն մի՛ վերցըներ, ու որբերուն արտերը մի՛ մտներ.
11 Քանզի անոնց Վրէժխնդիրը զօրաւոր է, և քեզի դէմ՝ անոնց իրաւունքը անիկայ պիտի պաշտպանէ ։
12 Քու սիրտդ խրատի տուր, ու ականջներդ գիտութեան խօսքերուն ։
13 Տղայէն խրատը մի՛ կտրեր. վասն զի թէ որ զանիկայ գաւազանով ծեծես, չմեռնիր ։

Գլ. ԻԸ. 20։ Ա Տիմ. Զ. 9, 10։
Գլ. Գ. 5։ Հռով. ԺԲ. 16։
* Կամ՝ իմաստութենէդ
Օր. ԺԵ. 9։
Սաղ. ճխա. 4։
Սաղ. ԺԲ. 2։
Գլ. Թ. 8։ Մատ. Է. 6։
Օր. ԺԹ. 14։ ԻԷ. 17։ Գլ. ԻԲ. 28։
Յոբ. Լա. 21։ Ա։ Գլ. ԻԲ. 23։
Գլ. ԺԴ. 24։ ԺԹ. 18։ ԻԲ. 15։ ԻԹ. 15, 17։

14 Դուն անիկայ գաւազանով կը ծեծես, բայց անոր հոգին դժոխքէն կ'ազատես ։
15 Որդեակ իմ՝ թէ որ քու սիրտդ իմաստուն ըլլայ, իմ սիրտս ալ պիտի ուրախանայ ։
16 Ու երբոր քու շրթունքներդ ուղիղ բաներ խօսին, իմ երիկամունքներս պիտի ցնծան ։
17 Քու սիրտդ մեղաւորներուն չնախանձի. հապա ամէն օր Տէրոջը վախին մէ՛ջ եղիր ։
18 Վասն զի իրաւցընէ վախճան մը կայ, ու քու յոյսդ պիտի չկտրի ։
19 Որդեակ իմ՝ լսէ՛, ու իմաստուն եղիր, և քու սիրտդ ուղիղ ճամբուն մէ՛ջ շիտկէ ։
20 Մի՛ ընկերանար գինեմոլներուն հետ, ու †իրենց մարմինը մաշողներուն" հետ.
21 Վասն զի գինեմոլը ու շռայլը աղքատ կ'ըլլան. և քունը՝ պատռտած հանդերձներ կը հագցընէ ։
22 Հնազանդութիւն ըրէ հօրդ՝ որ քեզ ծներ է, ու մի՛ անարգեր քու մայրդ՝ երբոր կը պառւի ։
23 Ճշմարտութիւնը ծախու առ, ու զանիկայ մի՛ ծախեր. նմանապէս իմաստութիւնը, խրատը ու հանճարը ։
24 Արդարին հայրը շատ պիտի ցնծայ, և իմաստուն զաւակ ծնանողը անոր վրայ պիտի ուրախանայ ։
25 Թող քու հայրդ ու մայրդ քեզմով ուրախանան, ու քեզ ծնանողը՝ թող ցնծայ ։
26 Որդեակ իմ՝ քու սիրտդ ինծի՛ տուր, և քու աչքերդ թող իմ ճամբաներս դիտեն.
27 Վասն զի պոռնիկը խորունկ փոս է, ու օտար կնիկը նեղ ջրհոր է.
28 Եւ անիկայ գողի պէս դարանը կը մտնէ, ու մարդոց մէջ անհաւատարիմները կ'աւելցընէ ։
29 Որո՞ւնն է վայը. որո՞ւնն է ո՛հը. որո՞ւնն են կռիւները. որո՞ւնն են տրտունջները. որո՞ւնն են առանց պատճառի վէրքերը. որո՞ւնն է աչաց կարմրութիւնը ։
30 Գինիին քովը մնացողներուն, խառնած գինին փնտռելու գացողներուն ։
31 Մի՛ նայիր գինիին կարմրութեանը՝ գաւաթին մէջ իր գոյնը ցուցընելուն՝ ու շիտակ վազելուն.
32 Անիկայ ետքը օձի պէս կը խածնէ, ու քարբի պէս կը խայթէ ։
33 Անկէ ետքը քու աչքերդ օտար կնիկներու պիտի նային, և քու սիրտդ ծուռ բաներ պիտի խօսի.

Ն. Ք. ԴՔ. Իրր 1000
Ա Կոր. Ե. 5։
Հմր 24, 25։ Գլ. ԻԹ. 3։
Սաղ. ԼԷ. 1։ Հգ. 8։ Գլ. Գ. 31։ ԻԴ. 1։
Գլ. ԻԸ. 14։
Սաղ. ԼԷ. 37։ Գլ. ԻԴ. 14։ Ղու. ԺԶ. 25։
Գլ. Դ. 23։
Եսա. Ե. 22։ Մատ. ԻԴ. 49։ Ղու. ԻԱ. 34։ Հռով. ԺԳ. 13։ Եփես. Ե. 18։
† Կամ՝ զեղխութեամբ միս ուտողներուն
Գլ. ԺԹ. 15։
Գլ. Ա. 8։ Լ. 17։ Եփես. Զ. 1, 2։
Գլ. Դ. 5, 7։ Մատ. ԺԳ. 44։
Գլ. Ժ. 1։ ԺԵ. 20։ Հմր 15։
Գլ. ԻԲ. 14։
Գլ. Է. 12։ Ժող. Է. 26։
Եսա. Ե. 11, 22։
Ծն. ԽԹ. 12։
Գլ. Ի. 1։ Եփես. Ե. 18։
Սաղ. ԿԵ. 8։ Գլ. Թ. 2։

Ն. Ք. ԳՔ.
ԻՐ 1000

* Եբր. սիր-
տը
Ը Երեմ. Ե.
8 ։ Տե՛ս ԳԼ.
ԻԷ. 22 ։
Ռ Եփե. Դ.
19 ։
Ս Տե՛ս Բ Օր.
ԻԹ. 19 ։
Ես. ԾԶ. 12 ։

34 Եւ ծովուն * մէջը պառկողի պէս,
ու կայմի վրայ պառկողի պէս պի-
տի ըլլաս ։
35 Ռ Պիտի ըսես . Ը Զիս ծեծեցին,
ու ես ցաւ մը չզգացի, ինծի զար-
կին, ու Ռ ես բան մը չիմացայ .
Ս Ե՞րբ պիտի արթննամ, որ զանի-
կայ նորէն փնտռեմ ։

ԳԼ. ԻԴ

1 Ա Չար մարդոց մի՛ նախանձիր, Բ ու
անոնց հետ կենալու մի՛ ցան-
կար .
2 Գ Վասն զի անոնց սիրտը բռնու-
թիւն կը խորհի, և անոնց շըր-
թունքները վնասներու վրայով կը
խօսին ։
3 Տունը իմաստութեամբ կը շի-
նուի, ու հանճարով կը հաստա-
տուի ։
4 Եւ շտեմարանները գիտութեամբ՝
ամէն տեսակ պատուական ու վայե-
լուչ գանձերով կը լեցուին ։
5 Դ Իմաստուն մարդը զօրաւոր
կ'ըլլայ, ու գիտութիւն ունեցողը
ոյժը կ'աւելցընէ ։
6 Ե Վասն զի պատերազմդ խոհե-
մութեամբ կ'ընես . և † ազատու-
թիւնը՝ խորհրդականներու շատու-
թիւնով կ'ըլլայ ։
7 Զ Իմաստութիւնը յիմարին հա-
մար շատ բարձր է . անիկայ դրա-
նը մէջ իր բերանը չբանար ։
8 Ո՛վ որ Է չարութիւն ընել կը
մտածէ, անիկայ նենգամիտ պիտի
ըսուի ։
9 Յիմարութեան խորհուրդը մեղք
է, և ծաղր ընողը մարդոց զզուե-
լի է ։
10 Թէ որ նեղութեան օրը թուլ-
նաս, ոյժդ քիչ է ։
11 Ը Ազատէ՛ զանոնք որ մեռցուելու
կը տարուին, ու սպաննուելու վը-
րայ եղողները ազատելէն ետ մի՛ կե-
նար ։
12 Թէ որ ըսես թէ՝ Մենք ասիկայ
չգիտցանք, աՀա՛ Թ սիրտերը կշռողը
ինքը կը հասկընայ . ու քու հոգիդ
պաշտպանողը ինքը գիտէ, և ամէն
մարդուն Ժ իր գործքին չափովը պի-
տի հատուցանէ ։
13 Ո՛րդեակ իմ՝ Ի մե՛ղր կեր, որ ա-
ղէկ է, և մեղրախորիսխ կեր, որ
քիմացդ քաղցր է ։
14 Լ Իմաստութեան ճանաչումն ալ
քու հոգիիդ այնպէս պիտի ըլ-
լայ, թէ որ զանիկայ գտնես . և
Խ վախճան մը կայ, ու քու յոյսդ
պիտի չկտրի ։
15 Ո՛վ չար՝ Ծ արդարին տանը դա-
րանակալ մի՛ ըլլար . անոր ‡ հանգս-
տարանը մի՛ աւրեր ։

Դ ԳԼ. ԻԱ.
22 ։ Ժող.
Թ. 16 ։

Ե ԳԼ. ԺԱ.
14 ։ ԺԵ. 22 ։
Ի. 18 ։ Ղու.
ԺԴ. 31 ։
† Կամ՝ յաղ-
թութիւնը՝
Զ Սաղ. Ժ.
5 ։ ԳԼ. ԺԴ.
6 ։
Է Հռով. Ա.
30 ։

Ը Սաղ. ՁԲ.
4 ։ Ես. ԾԸ.
6, 7 ։ Ա
Յով. Գ. 16 ։

Թ ԳԼ. ԻԱ. 2 ։

Ժ Յոբ. ԼԴ.
11 ։ Սաղ.
ԿԲ. 12 ։ Ե-
րեմ. ԼԲ.
19 ։ Հռով.
Բ. 6 ։ Յայտ.
Բ. 23 ։ ԻԲ.
12 ։
Ի Երգ. Ե. 1 ։
Լ Սաղ. ԺԹ.
10 ։ ՃԺԹ.
103 ։
Խ ԳԼ. ԻԳ. 18 ։
Ծ Սաղ. Ժ. 9,
10 ։
‡ Կամ՝ հան-
գըստու-
թեան տեղը

16 Կ Վասն զի արդարը թէև եօթը
անգամ ալ իյնայ, պիտի կանգնի .
Հ բայց չարերը ձախորդութեան մէջ
պիտի իյնան ։
17 Ձ Երբոր քու թշնամիդ իյնայ՝ մի՛
ուրախանար, ու երբոր անոր ոտ-
քը սահի, քու սիրտդ թող չցըն-
ծայ ։
18 Չըլլայ որ Տէրը տեսնէ, ու իրեն
անհաճոյ երևնայ, և իր բարկու-
թիւնը անոր վրայէն դարձընէ ։
19 Ղ Չարագործներուն համար մի՛
բարկանար, ու ամբարիշտներուն մի՛
նախանձիր .
20 Վասն զի Ճ չար մարդը բարի վախ-
ճան չունենար . Մ ամբարիշտներուն
ճրագը պիտի մարի ։
21 Ո՛րդեակ իմ՝ Յ Տէրոջմէ ու թա-
գաւորէն վախցիր, և ‖ խռովարար
մարդոց հետ մի՛ խառնուիր ։
22 Քանզի անոնց կործանումը յան-
կարծ կ'ըլլայ, ու երկուքին ալ
պատուհասը ո՞վ գիտէ ։
23 Ասոնք ալ իմաստուններուն
յատուկ է . Ն դատաստանի մէջ ա-
չառութիւն ընելը աղէկ չէ՛ ։
24 Շ Ո՛վ որ ամբարշտին կ'ըսէ թէ՝
Դուն արդար ես, ազգերը անոր ա-
նէծք պիտի տան, ու ժողովուրդ-
ները զանիկայ պիտի անարգեն ։
25 Բայց յանդիմանութիւն տուող-
ներուն՝ շնորհք կ'ըլլայ, և անոնց
վրայ բարի օրհնութիւն կու գայ ։
26 Շիտակ պատասխան տուողը
շրթունքներ կը համբուրէ ։
27 Ո Դուրսի գործքդ կանոնաւորէ,
և զանիկայ քու արտիդ մէջ կարգի
դիր, ու տունդ ետքը շինէ ։
28 Չ Քու դրացիիդ դէմ զուր տեղը
վկայութիւն մի՛ ըներ, և քու շըր-
թունքներովդ մի՛ խաբեր ։
29 Պ Մի՛ ըսեր թէ՝ Անիկայ ինծի ինչ-
պէս որ ըրաւ, ես ալ անոր այնպէս
պիտի ընեմ, ան մարդուն՝ իր
գործքին համեմատ հատուցում
պիտի ընեմ ։
30 Ծոյլ մարդուն արտին քովէն՝ ու
պակասամիտ մարդուն այգիին քո-
վէն անցայ .
31 Եւ ահա Ջ ամէնուն մէջը փուշեր
բուսեր էին, ու անոնց երեսը ե-
ղինճներ ծածկեր էին, և անոր քա-
րէ պատը փլած էր .
32 Ու երբոր զանիկայ տեսայ, մտքիս
մէջը պահեցի, անոր նայեցայ, ու
անկէ խրատ առի ։
33 Ռ Թէ որ քիչ մը քնանաս, քիչ
մը նիրհես, ու քիչ մը ձեռք ձեռ-
քի վրայ դնես ննջելու համար,
34 Քու աղքատութիւնդ ճամբորդի
պէս պիտի գայ . և քու կարօտու-
թիւնդ սպառազինեալ մարդու
պէս ։

Ն. Ք. ԳՔ.
ԻՐ 1000

Կ Յոբ. Ե. 19 ։
Սաղ. ԼԴ.
19 ։ ԼԷ. 24 ։
Միք. Է. 8 ։
Հ Եսթ. Է.
10 ։ Ամով.
Ե. 2 ։ Ը.
14 ։ Յայտ.
ԺԸ. 21 ։
Ձ Յոբ. ԼԱ.
29 ։ Սաղ.
ԼԵ. 15, 19 ։
ԳԼ. ԺԷ. 5 ։
Աբդ. 12 ։
Ղ Սաղ. ԼԷ.
1 ։ Հգ. 3 ։
ԳԼ. ԻԳ.
17 ։ Հմր 1 ։
Ճ Սաղ. ԺԱ.
6 ։
Մ Յոբ. ԺԲ.
5, 6 ։ ԻԱ.
17 ։ ԳԼ. ԺԳ.
9 ։ Ի. 20 ։
Յ Հռով. ԺԳ.
7 ։ Ա Պետ.
Բ. 17 ։
‖ Եբր. փո-
փոխական
Ն Ղև. ԺԹ.
15 ։ Բ Օր.
Ա. 17 ։ ԺԶ.
19 ։ ԳԼ. ԺԸ.
5 ։ ԻԸ. 21 ։
Յով. Է. 24 ։
Շ ԳԼ. ԺԷ.
15 ։ Ես. Ե.
23 ։

Ո Ղուկ. Ե.
17, 18 ։ Ղու.
ԺԴ. 28 ։

Չ Եփե. Դ.
25 ։

Պ ԳԼ. Ի. 22 ։
Մատ. Ե.
39, 44 ։ Հը-
ռով. ԺԲ.
17, 19 ։

Ջ Ծն. Գ. 18 ։

Ռ ԳԼ. Զ. 9.
Ժ ։

## ԳԼ. ԻԵ

1 Թագաւորներու վրայով ։ 8 Վէճերէն, ու անոնց զանազան պատճառներէն զգուշանալու վրայով ։

1 ա Ասոնք ալ Սողոմոնին առակներն են, որ Յուդայի Եզեկիա թագաւորին մարդիկները օրինակեցին ։
2 բ Բանը ծածկելը Աստուծոյ փառքն է . բայց թագաւորներուն փառքը՝ գ բանը աղէկ քննելն է ։
3 Երկնից բարձրութիւնը, ու երկրիս խորութիւնը, և թագաւորներուն սիրտը չքննուիր ։
4 դ Վերցուր արծաթէն կղկղանքը, ու ոսկերիչին համար մաքուր անօթ կ'ելլէ .
5 ե Վերցուր թագաւորին առջևէն ամբարիշտը, ու անոր աթոռը արդարութեամբ կը հաստատուի ։
6 Թագաւորին առջևը մի՛ պարծիր, և մեծերուն տեղը մի՛ կենար .
7 զ Վասն զի աղէկ է որ քեզի ըսեն թէ՝ Հոս ելիր, քան թէ քու աչքերուդ տեսած իշխանին առջևը վար իջեցընեն քեզ ։
8 է *Կռիւի համար շուտով դուրս մի՛ ելլեր . չըլլայ թէ՝ երբոր ընկերդ քեզ ամչցընէ, դուն վերջը ինչ ընելիքդ չգիտնաս ։
9 ը Ընկերիդ հետ քու դատդ վարէ, բայց գաղտնիքը ուրիշին մի՛ յայտներ .
10 Չըլլայ որ լսողը քեզ անարգէ, ու գէշ անունդ անջնջելի մնայ ։
11 թ Յարմարութեամբ ըսուած խօսքը՝ արծաթէ զարդերու մէջ դրուած ոսկիէ խնձորներու կը նմանի ։
12 Իմաստունին յանդիմանութիւնը՝ մտիկ ընող ականջին, ոսկիէ օղ՝ ու մաքուր ոսկիէ մանեակ է ։
13 ժ Հաւատարիմ դեսպանը՝ զինքը խրկողներուն՝ հունձքի ատենի ձիւնին զովութեանը պէս է, և իր տիրոջը հոգին կը զուարճացընէ ։
14 լ Սուտ † առատաձեռնութեան վրայ պարծեցողը՝ խ անանձրև ամպերու ու հովի պէս է ։
15 ծ Համբերութեամբ՝ իշխանին սիրտը կ'իջնէ ; և անուշ լեզուն ոսկորներ կը կոտրէ ։
16 կ Թէ որ մեղր գտնես, քեզի բաւական եղածին չափ կեր, չըլլայ որ անով կշտանաս, ու զանիկայ փսխես ։
17 Քու ոտքդ դրացիիդ տունը յաճախ չկոխէ, չըլլայ որ քեզմէ ձանձրանայ, ու քեզ ատէ ։
18 հ Իր դրացիին համար սուտ վկայութիւն ընողը՝ ուռի, սուրի և սրած նետի պէս է ։
19 Նեղութեան օրը անհաւատարիմ մարդու ապաւինիլը՝ փշրուող ակռայի և դիւրաղլոր ոտքի ողորկնելու պէս է ։
20 ձ Տրտում մարդուն առջևը երգեր երգողը՝ ցուրտ օրը իր զգեստը հանողին, նաև բորակի վրայ թափուած քացախին կը նմանի ։
21 ղ Թէ որ թշնամիդ անօթի է, անոր հաց կերցուր, ու թէ որ ծարաւ է, անոր ջուր խմցուր .
22 Քանզի այսպէս ընելով՝ անոր գլխուն վրայ կրակի կայծեր կը դիզես, ճ և Տէրը քեզի հատուցում պիտի ընէ ։
23 մ Հիւսիսային հովը՝ անձրևը ‡ կը ցրուէ, ու խոժոռ դէմքը՝ յ չարախօս լեզուն ։
24 ն Աղէկ է տանիքի մը անկիւնը բնակիլ, քան թէ կռուասէր կընկան հետ մեծ տան մէջ ։
25 Ինչպէս է պաղ ջուրը ծարաւած մարդուն՝ այսանկ ալ է հեռու երկրէ եկած բարի լուրը ։
26 Չար մարդուն առջևը իյնող արդարը՝ պղտորուած աղբիւրի, ու աւրուած ակի կը նմանի ։
27 շ Շատ մեղր ուտելը աղէկ չէ, և մարդուն ո իր փառքը փնտռելը փառք չէ ։
28 չ Իր ոգին չզսպող մարդը՝ փլած ու անպարիսպ քաղաքի պէս է ։

## ԳԼ. ԻԶ

1 Յիմարներու, 13 Ծոյլերու, 17 ու հակառակասէր բանսարկուներու վրայով ։

1 Ինչպէս որ ամառուան մէջ ձիւն, ա և հունձքի ատեն անձրև, այնպէս ալ յիմարին պատիւ չվայլեր ։
2 Ինչպէս որ ճնճղուկը կը պտըտի, ու ծիծեռնիկը կը թռչի, այնպէս ալ բ առանց պատճառի անէծքը չգար ։
3 գ Ձիուն խարազան՝ ու իշուն սանձ՝ և յիմարներուն կռնակին գաւազան պէտք է ։
4 Յիմարին իր յիմարութեանը համեմատ պատասխան մի՛ տար, չըլլայ որ դուն ալ անոր նման ըլլաս ։
5 դ Յիմարին իր յիմարութեանը համեմատ պատասխան տուր, չըլլայ որ անիկայ զինքը իմաստուն կարծէ ։
6 Յիմարին ձեռքովը խօսք խրկողը՝ իր ոտքերը կը կտրէ, ու վնաս ‖ կը քաշէ ։
7 Ինչպէս որ կաղին ոտքերը կ'երերան, այնպէս ալ յիմարին բերնին մէջ առակը ։
8 Յիմարին պատիւ տուողը՝ § քարակոյտի մը մէջ պատուական քարերու ծրար դնողին կը նմանի ։
9 Առակը յիմարին բերնին մէջ՝

Ն. Ք. ԳՔ. իրր 700

ա Գ Թագ. Դ. 32 ։
բ Բ Օր. ԻԹ. 29 ։ Հռով. ԺԱ. 33 ։
գ Յոբ. ԻԹ. 16 ։
դ Բ Տիմ. Բ. 21 ։
ե Տես Գլ. Ի. 8 ։
զ Գլ. ԺԶ. 12 ։ ԻԹ. 14 ։
է Ղուկ. ԺԴ. 8, 9, 10 ։
ը Գլ. ԺԷ. 14 ։ Մատ. Ե. 25 ։ * Կամ՝ Դատի
թ Մատ. Ե. 25 ։ ԺԸ. 15 ։
ժ Գլ. ԺԵ. 23 ։ Ես. Ծ. 4 ։
ի Գլ. ԺԳ. 17 ։
լ Գլ. Ի. 6 ։ † Կամ՝ տուրքի
խ Յուդ. 12 ։
ծ Ծն. ԼԲ. 4 ։ Ա Թագ. ԻԵ. 24 ։ Գլ. ԺԵ. 1 ։ ԺԶ. 14 ։
կ Համր 27 ։
հ Սաղ. ԾԷ. 4 ։ ԿԴ. 3, 4 ։ Գլ. ԺԲ. 18 ։

Ն. Ք. ԳՔ. իրր 700

ձ Դան. Զ. 18 ։ Հռով. ԺԲ. 15 ։
ղ Ել. ԻԳ. 4, 5 ։ Մատ. Ե. 44 ։ Հռով. ԺԲ. 20 ։
ճ Բ Թագ. ԺԶ. 12 ։
մ Յոբ. ԼԷ. 22 ։
‡ Կամ՝ կը յարուցանէ ։
յ Սաղ. ՃԱ. 5 ։
ն Գլ. ԺԹ. 13 ։ ԻԱ. 9, 19 ։
շ Համր 16 ։
ո Գլ. ԻԵ. 2 ։
չ Գլ. ԺԶ. 32 ։
ա Ա Թագ. ԺԲ. 17 ։
բ Թու. ԻԳ. 8 ։ Բ Օր. ԻԳ. 5 ։
գ Սաղ. ԼԲ. 9 ։ Գլ. Ժ. 13 ։
դ Մատ. ԺԶ. 1–4 ։ ԻԱ. 24–27 ։
‖ Եբր. կը խմէ ։
§ Կամ՝ պարսատիկի մէջ քար կապողին

Ն. Ք. Գ. Ք. Իրր 700

գինովին ձեռքը մտնող փուշին պէս է։
10 Մեծ է ամէն բան Ստեղծողը, որ յիմարին վարձք կու տայ, և յանցաւորներուն վարձք կու տայ։
11 ե Ինչպէս որ շունը իր փսխածին կը դառնայ, նոյնպէս ալ յիմարը իր յիմարութեանը կը դառնայ։
12 է Զինքը իմաստուն կարծող մարդ մը տեսա՞ր. աւելի յոյս կայ յիմարէն՝ քան թէ անկէ։
13 ը Ծոյլը կ'ըսէ թէ՝ Ճամբուն մէջ առիւծ կայ, ու հրապարակներուն մէջ կորիւն։
14 Ինչպէս որ դուռը իր ծղխնիներուն վրայ կը դառնայ, այնպէս ալ ծոյլը իր անկողինին վրայ։
15 թ Ծոյլը իր ձեռքը ամանին մէջը կը խոթէ, ու բերանը անգամ տանելու դժուարութիւն կը զգայ։
16 Ծոյլը իր աչքերուն՝ խելացի պատասխան տուող եօթը մարդէն աւելի իմաստուն կ'երեւնայ։
17 Իրենը չեղած դատին համար բարկացող անցաւորը՝ շունը ականջներէն բռնողին պէս է։
18 Ինչպէս կատղած մարդը՝ որ կրակի կայծեր, նետեր ու մահ կը ցանէ,
19 Այնպէս է ան մարդը՝ որ իր բարեկամին նենգութիւն կ'ընէ, ու ետքը կ'ըսէ. ժ Ահա կատակ ըրի։
20 Առանց փայտի կրակը կը մարի, և ի թէ որ քսու չըլլայ, կռիւը կը դադարի։
21 լ Ինչպէս ածուխը կայծերուն, ու փայտը կրակին, այնպէս է կռուասէր մարդը վէճ բռընկցընելու։
22 խ Քսու մարդուն խօսքերը քաղցր պատառներու պէս են, ու անոնք մինչեւ փորին շտեմարանները կ'իջնեն։
23 Եռանդուն շրթունքները ու չար սիրտը արծաթի կղկղանքով պատած հողէ ամանի կը նմանին։
24 Ատեցողը իր շրթունքներովը կը կեղծէ, ու սրտին մէջը նենգութիւն կը պահէ.
25 ծ Անոր գեղեցիկ խօսուածքին չհաւատաս. վասն զի անոր սրտին մէջը եօթը զզուելի բան կայ։
26 Ան որ իր ատելութիւնը նենգութեամբ կը ծածկէ, անոր չարութիւնը ժողովքի մէջ պիտի յայտնուի։
27 կ Փոս փորողը ինքը մէջը պիտի իյնայ, և ան որ քար կը գլորէ, իրեն պիտի դառնայ։
28 Ստախօս լեզուն * իր ծեծածները" կ'ատէ, ու շողոքորթող բերանը կորուստ կ'ընէ։

ե Բ Պետ. Բ. 22։ Ղեւ. Ը. 15։
է Գլ. ԻԹ. 20։ Ղու. ԺԸ. 11։ Հռով. ԺԲ. 16։ Յայտ. Գ. 17։
ը Գլ. ԻԲ. 13։
թ Գլ. ԺԹ. 24։
ժ Եփե. Ե. 4։
ի Գլ. ԻԲ. 10։
լ Գլ. ԺԵ. 18։ ԻԹ. 22։
խ Գլ. ԺԸ. 8։
ծ Սաղ. ԻԸ. 3։ Երեմ. Թ. 8։
կ Սաղ. Է. 15, 16։ Թ. 15։ Ժ. 2։ ԾԷ. 6։ Գլ. ԻԸ. 10։ Ժող. Ժ. 8։
* Կամ՝ զինքը ծեծողները

## ԳԼ. ԻԷ

1 Անձնասիրութեան. 5 Ճշմարիտ սիրոյ. 11 զանազան յանցանքներէ զգուշանալու, 23 և ընտանեկան խնամքի վրայով խրատներ։

1 Վաղուան համար մի՛ պարծիր. ա վասն զի չես գիտեր թէ օրը ինչ պիտի ծնանի։
2 բ Քեզ ուրիշը թող գովէ, և չէ՛ թէ քու բերանդ, օտարը՝ և չէ՛ թէ քու շրթունքներդ։
3 Քարը ծանրութիւն, ու աւազը բեռ ունի. բայց յիմարին բարկութիւնը՝ երկուքէն ալ ծանր է։
4 Բարկութիւնը անողորմ է, ու սրտմտութիւնը խիստ է. բայց գ նախանձին առջեւ ո՞վ կրնայ կենալ։
5 դ Յայտնի յանդիմանութիւնը ծածուկ սէրէն աղէկ է։
6 ե Բարեկամին տուած վէրքերը հաւատարիմ են. բայց թշնամիին համբոյրները առատ են։
7 Կուշտ մարդը խորիսխը կ'արհամարհէ. բայց զ Անօթի մարդուն՝ ամէն լեղի բան անուշ կու գայ։
8 Իր տեղէն թափառական եղող մարդը՝ իր բոյնէն թափառական եղող թռչունին պէս է։
9 Եղը ու խունկը՝ սիրտը կը զուարճացընեն. նմանապէս բարեկամին քաղցրութիւնը՝ մտերիմ խորհրդով։
10 Քու բարեկամդ, ու քու հօրդ բարեկամը մի՛ թողուր, և քու նեղութեանդ ատենը քու եղբօրդ տունը մի՛ երթար. է Մօտ դրացին՝ հեռու եղող եղբօրմէ աղէկ է։
11 ը Ո՛րդեակ իմ՝ իմաստուն եղիր, ու սիրտս ուրախացուր, թ որ զիս անարգողին պատասխան տամ։
12 ժ Խորագէտը չարիքը կը տեսնէ, ու կը զգուշանայ. բայց միամիտները առաջ կ'անցնին, ու վնաս կը կրեն։
13 ի Օտարականի մը երաշխաւոր եղողին զգեստը առ, և օտար կնկան համար երաշխաւոր եղողէն գրաւ առ։
14 Թէ որ մէկը առաւօտուն կանուխ ելլէ, ու իր դրացին բարձր ձայնով օրհնէ, անիկայ անոր անէծք կը սեպուի։
15 լ Անձրեւոտ օրուան շարունակ կաթիլը՝ ու կռուասէր կնիկը իրարու կը նմանին.
16 Զանիկայ ծածուկ պահողը՝ հովը կը պահէ, և աջ ձեռքին մէջ պահուած եղը ինքզինք կը յայտնէ։
17 Երկաթը երկաթով կը սրուի, ու մարդը իր բարեկամին երեսը կը սրէ։
18 խ Թզենիին հոգ տանողը՝ անոր պտուղը կ'ուտէ, և իր տէրը պահպանողը՝ պատիւ կը գտնէ։
19 Ինչպէս ջուրը՝ երեսը երեսին, նոյնպէս ալ սիրտը՝ մարդը մարդուն կը ցուցնէ։
20 ծ Դժոխքը ու կորուստը չեն կըշ-

Ն. Ք. Գ. Ք. Իրր 700

ա Ղու. ԺԲ. 19, 20։ Յակ. Դ. 13, 14։
բ Գլ. ԻԵ. 27։
գ Ա Յով. Գ. 12։
դ Գլ. ԻԸ. 23։ Գաղ. Բ. 14։
ե Սաղ. ՃԽԱ. 5։
զ Յոբ. Զ. 7։
է Գլ. ԺԷ. 17։ ԺԸ. 24։ Տես Գլ. ԺԹ. 7։
ը Գլ. Ժ. 1։ ԻԳ. 15, 24։
թ Սաղ. ՃԻԷ. 5։
ժ Գլ. ԻԲ. 3։
ի Տես Ել. ԻԲ. 26։ Գլ. Ի. 16։
լ Գլ. ԺԹ. 13։
խ Ա Կոր. Թ. 7, 13։
ծ Գլ. Լ. 16։ Ամբ. Բ. 5։

Ն. Ք. Գ. Ք. Իրր 700

Ժող. Ա. 8։ Գ. 7։ Գլ. ԺԵ. 3։

տանար. մարդուն աչքերն ալ չեն կշտանար։
21 Ինչպէս հալոցը արծաթը և քուրան ոսկին կը փորձէ, այնպէս ալ մարդը՝ զինքը գովող բերանը կը փորձէ։

Յես. Ա. 5։ Երեմ. Ե. 3։ Գլ. ԻԳ. 35։

22 Յիմարը ցորենի հետ անկանի մէջ սանդիտոռով ծեծես ալ, անոր յիմարութիւնը անկէ չերթար։
23 Քու ոչխարներուդ վիճակը աղէկ գիտցիր, ու քու հօտերուդ աղէկ նայէ.
24 Վասն զի հարստութիւնը միշտ չմնար, ու թագը դարէ 'ի դար չտևեր։

Սաղ. ԾԴ. 14։

25 Կանանչը կը բուսնի, խոտը կ'երևնայ, և լեռներուն խոտերը կը ժողվուին։
26 Գառները քու հագուստիդ համար են. ու նոխազները դաշտերուն գինն են։
27 Քու կերակուրիդ համար, քու տանդ կերակուրին համար, ու քու աղախիններուդ ապրուստին համար՝ բաւական այծի կաթ պիտի ըլլայ։

ԳԼ. ԻԸ

1—28 Ամբարշտութեան և հոգևոր անկեղծութեան վրայով ընդհանուր ծանօթութիւններ։

Ղև. ԻԶ. 17. 36։ Սաղ. ԾԳ. 5։

1 Ամբարիշտը առանց մէկու մը հալածելուն կը փախչի. բայց արդարները առիւծի պէս քաջասիրտ կ'ըլլան։
3 Երկրին յանցանքովը՝ անոր իշխանները շատ կ'ըլլան. բայց անոր վիճակը՝ իմաստուն ու գիտուն մարդուն ձեռքովը շատ ատեն կը դիմանայ։

Մատ. ԺԸ. 28։ Սաղ. Ժ. 3։ Խթ. 18։ Հռով. Ա. 32։

3 Աղքատները զրկող չքաւոր մարդը՝ հացի կարօտութիւն բերող յորդահոս անձրևի պէս է։
4 Օրէնքը մերժողները՝ ամբարիշտները կը գովեն. բայց օրէնքը պահողները՝ անոնց դէմ կը կենան։

Թագ. ԺԸ. 18, 21։ Մատ. Գ. 7։ ԺԴ. 4։ Եփե. Ե. 11։

5 Չար մարդիկները իրաւունքը չեն հասկընար. բայց Տէրը փնտռողները ամէն բան կը հասկընան։

Սաղ. ԻԲ. 6։

6 Իր կատարելութեանը մէջ քալող աղքատը՝ ծուռ ճամբաներու մէջ քալող հարուստ մարդէն աղէկ է։

Յոհ. Է. 17։ Կոր. Բ. 15։ Յոհ. Բ. 20, 27։

7 Օրէնքը պահողը իմաստուն տղայ է. բայց շռայլներուն բարեկամ եղողը՝ իր հայրը կ'ամչցնէ։

Գլ. ԺԹ. 1։ Հմր 18։ Գլ. ԻԹ. 3։

8 Իր ստացուածքը տոկոսիքով և վաշխով աւելցընողը՝ զանիկայ աղքատին ողորմութիւն ընողին համար կը ժողվէ։

Յոբ. ԻԷ. 16, 17։ Գլ. ԺԴ. 22։ Ժող. Բ. 26։

9 Ան որ օրէնքը մտիկ ընելէն ետ կը դարձնէ իր ականջը, անոր աղօթքը անգամ պիղծ է։

Զաք. Է. 11։ Սաղ. ԿԶ. 18։ ՃԹ. 7։ Գլ. ԺԵ. 8։

10 Ուղիղները չար ճամբու մէջ մոլորցնողը՝ իր փոսին մէջը պիտի իյնայ. սակայն արդարները բարիք պիտի ժառանգեն։

Գլ. ԻԶ. 27։ Մատ. Զ. 33։

11 Հարուստ մարդը իր աչքերուն իմաստուն կ'երևնայ. բայց հանճարեղ աղքատը զանիկայ կը քննէ։
12 Երբոր արդարները ուրախանան, մեծ փառք կ'ըլլայ. բայց երբոր ամբարիշտները բարձրանան, մարդ կը փնտռուի։

Հմր 28։ Գլ. ԺԱ. 10։ ԻԹ. 2։ Տես Ժող. Ժ. 6։

Կամ՝ կը պահուըտի։

13 Իր յանցանքները ծածկողը յաջողութիւն չգտներ. բայց զանոնք խոստովանողը ու մէկդի ձգողը ողորմութիւն կը գտնէ։

Սաղ. ԼԲ. 3, 5։ Յոհ. Ա. 8, 9, 10։

14 Միշտ վախցող մարդը երանելի է. բայց իր սիրտը խստացընողը չարիքի մէջ պիտի իյնայ։

Սաղ. ԺԶ. 8։ Գլ. ԻԴ. 17։

15 Աղքատ ժողովուրդի վրայ իշխող ամբարիշտը՝ մռնչող առիւծի ու անյագ արջու կը նմանի։

Հռով. Բ. 5։ ԺԱ. 20։ Ել. Ա. 14, 16, 22։ Մատ. Բ. 16։ Ա Պետ. Ե. 8։

16 Խոհեմութիւն չունեցող իշխանը շատ զրկողութիւններ կ'ընէ. բայց ագահութենէ զզուողը իր կեանքը կ'աւելցընէ։
17 Արիւնապարտ մարդը մինչև գուբը կը փախչի. թող մէկը չպաշտպանէ զանիկայ։

Ծն. Թ. 6։ Ել. ԻԱ. 14։ Եբր. Ան մը սրբունով ճնշուած

18 Կատարելութեամբ քալողը փրկութիւն կը գտնէ. բայց ծուռ մարդը որ երկու ճամբով կը քալէ, անոնց մէկուն մէջը կ'իյնայ։

Գլ. Ժ. 9, 25։ Հմր 6։

19 Իր երկիրը գործողը հացով պիտի կշտանայ, ու դատարկ մարդոց հետևողը աղքատութեամբ պիտի լեցուի։

Գլ. ԺԲ. 11։

20 Հաւատարիմ մարդը շատ օրհնութիւններ կ'առնէ. բայց հարուստ ըլլալու արտորացողը պիտի չարդարանայ։

Գլ. ԺԳ. 11։ Ի. 21։ ԻԳ. 4։ Հմր 22։ Ա Տիմ. Զ. 9։

21 Աչառութիւն ընելը աղէկ չէ. վասն զի պատառ մը հացի համար մարդ յանցանք կը գործէ։

Գլ. ԺԸ. 5։ ԻԴ. 23։ Եզեկ. ԺԳ. 19։

22 Չար աչք ունեցող մարդը՝ հարուստ ըլլալու կ'արտորայ, ու չգիտեր որ իր վրան աղքատութիւն պիտի գայ։

Հմր 20։

23 Մարդ յանդիմանողը վերջապէս շնորհք կը գտնէ լեզուով շողոքորթութիւն ընողէն աւելի։

Գլ. ԻԷ. 5, 6։

24 Ան որ իր հայրը կամ իր մայրը կը կողոպտէ, ըսելով թէ՝ Յանցանք չէ, անիկայ ապականարար մարդուն ընկերն է։

Գլ. ԺԸ. 9։

25 Հպարտ սիրտ ունեցող մարդը կռիւ կը հանէ. բայց Տէրոջը ապաւինողը պիտի գիրնայ։

Գլ. ԺԳ. 10։ Ա Տիմ. Զ. 6։

26 Իր սրտին ապաւինողը անմիտ է. բայց իմաստութեամբ քալողը պիտի ազատի։
27 Աղքատին տուողը կարօտ չըլլար. բայց անկէ երես դարձընողը շատ անէծքներ կ'առնէ։

Օր. ԺԵ. 7, 8։ Գլ. ԺԹ. 17։ ԻԲ. 9։

Ն. Ք. Ջ. Ք.
Իբր 700

ց Հմր 12։ Գլ. ԻԹ. 2։
ս Յոբ. ԻԴ. 4։

ա Թագ. Բ. 25։ Բ Մն. ԼԶ. 16։ Գլ. Ա. 24—27։
* Կամ՝ Կըռուանէր
բ Եսթ. Ը. 15։ Գլ. ԺԱ. 10։ ԻԸ. 12, 28։
գ Եսթ. Գ. 15։
դ Գլ. Ժ. 1։ ԺԵ. 20։ ԻԷ. 11։
ե Գլ. Ե. 9, 10։ Զ. 26։ ԻԸ. 7։ Ղու. ԺԵ. 13, 30։

զ Յոբ. ԻԹ. 16։ Լա. 13։ Սաղ. ԽԱ. 1։
է Գլ. ԺԱ. 11։
ը Եզեկ. ԻԲ. 30։

ԹՄատ. ԺԱ. 17։
Ժ Ծն. Գ. 5, 8։ Ա Յով. Գ. 12։
Ի Դատ. ԺԶ. 17։ Գլ. ԺԲ. 16։ ԺԴ. 33։

Լ Գլ. ԻԲ. 2։
Խ Մատ. Ե. 45։
Ծ Սաղ. ՀԲ. 2, 4, 13, 14։ Գլ. Ի. 28։ ԻԵ. 5։
Կ Հմր 17։

28 Թէ որ ամբարիշտները բարձրանան, մարդիկները կը պահուին. բայց թէ որ անոնք կորսուին, արդարները կը շատնան։

### ԳԼ. ԻԹ

1 Ընդհանուր 15 և մասնաւոր կառավարութեան վրայով խրատներ։ 22 Բարկութեան, ամբարտաւանութեան, գողութեան, երկչոտութեան և երեսպաշտութեան վրայով։

1 * Շատ անգամ յանդիմանուած մարդը՝ որ իր պարանոցը կը խստացընէ, յանկարծ պիտի կոտրուի, ու բժշկութիւն պիտի չգտնէ։

2 Երբ որ արդարները զօրանան, ժողովուրդը կ'ուրախանայ. բայց երբոր ամբարիշտը իշխանութիւն կ'ունենայ, ժողովուրդը կը հեծէ։

3 Իմաստութիւն սիրող մարդը՝ իր հայրը կ'ուրախացընէ. բայց պոռնիկներուն ընկեր եղողը՝ ստացուածքը կը ցրուէ։

4 Թագաւորը արդարութեամբ կը հաստատէ իր երկիրը. բայց կաշառք առնողը՝ զանիկայ կը կործանէ։

5 Իր ընկերին շողոքորթութիւն ընող մարդը՝ անոր քայլերուն որոգայթ կը լարէ։

6 Չար մարդուն ամբարշտութեանը մէջ որոգայթ կայ. բայց արդարը ցնծութեան և ուրախութեան մէջ պիտի ըլլայ։

7 Արդարը աղքատներուն դատը գիտէ. բայց չար մարդը տեղեակ չըլլար։

8 Ծաղր ընող մարդիկները քաղաքը կը բռնկցընեն. բայց իմաստունները բարկութիւնը կը դադրեցընեն։

9 Իմաստուն մարդը երբոր յիմարին հետ վիճաբանութիւն կ'ընէ, թէ՛ սրդողի և թէ ծիծաղի, հանգիստ չըլլար։

10 Արիւնահեղ մարդիկները արդարը կ'ատեն. բայց ուղիղները անոր որպիսութիւնը կը հարցընեն։

11 Յիմարը իր միտքը բոլորովին կը յայտնէ. բայց իմաստունը զանիկայ ուրիշատենի կը պահէ։

12 Սուտ խօսքերու ականջ դնող իշխանին բոլոր ծառաները չար կ'ըլլան։

13 Աղքատը ու բռնաւորը իրարու հանդիպեցան. երկուքին ալ աչքերուն լոյս տուողը Տէրն է։

14 Աղքատները ճշմարտութեամբ դատող թագաւորին աթոռը յաւիտեան հաստատ կ'ըլլայ։

15 Գաւազանը ու յանդիմանութիւնը իմաստութիւն կու տայ. բայց իր կամքին թողուած տղան իր մայրը կ'ամչցընէ։

16 Երբոր ամբարիշտները շատնան, յանցանքը կը շատնայ. բայց արդարները անոնց իյնալը պիտի տեսնեն։

17 Խրատէ՛ քու որդիդ, որ քեզ հանգստացընէ, և քու հոգիդ զուարճացընէ։

18 Առանց մարգարէութեան՝ ժողովուրդը կը խոտորի, բայց օրէնքը պահողը երջանիկ կ'ըլլայ։

19 Հակառակող ու պատասխան չըտուող ծառան խօսքերով չխրատուիր։

20 Իր խօսքերուն մէջ արտորացող մարդ մը տեսա՞ր. աւելի յոյս կայ յիմարէն՝ քան թէ անկէ։

21 Թէ որ մէկը իր ծառան տղայութենէն փափկութեամբ կը մեծցընէ, վերջապէս անիկայ իր տղան կ'ըլլայ։

22 Բարկասիրտ մարդը կռիւ կը հանէ, և ցասկոտ մարդը շատ յանցանքներ կը գործէ։

23 Մարդուն հպարտութիւնը զինքը կը կործանէ. բայց հեզահոգի մարդը փառք կը վաստըկի։

24 Գողին ընկեր եղողը իր հոգին կ'ատէ. անիկայ երդումը կը լսէ, ու իր գիտցածը չյայտներ։

25 Մարդու վախը որոգայթի մէջ կը ձգէ. բայց Տէրոջը ապաւինողը ամուր ապաստանարան կ'ունենայ։

26 Շատերը իշխանին երեսը կը փնտռեն. բայց մարդուն իրաւունքը Տէրոջմէն է։

27 Անօրէն մարդը արդարներուն զըզուելի է, և ուղղութեամբ քալողը ամբարշտին պղծուելի է։

### ԳԼ. Լ

1 Ագուրին հաւատոյ խոստովանութիւնը. 7 անոր երկու խնդիրքը։ 10 Ծառայի մը անիրաւութիւն չընելու վրայով։ 11 Չորս չար ցեղեր։ 15 Չորս տեսակ չկշտացող բաներ։ 17 Ծնողքը չանարգելու վրայով։ 18 Չորս բան՝ գիտնալու դժուար։ 21 Չորս անտանելի բան։ 24 Չորս տեսակ խելացի կենդանիներ։ 29 Չորս կարգ գեղեցիկ քալուածք ունեցողներ։ 32 Բարկութիւնը պէտք է սանձել։

1 Յակէեան Ագուրին խօսքերը, այսինքն պատգամը՝ որ անիկայ Իթիէլին խօսեցաւ, Իթիէլին և Ուքալին։

2 Յիրաւի ես ամէն մարդէ թանձրամիտ եմ, ու ես մարդկային հանճարութիւն չունիմ.

3 Ես իմաստութիւն չսորվեցայ, ու Ամենասուրբին գիտութիւնը չեմ գիտեր։

4 Երկինքը ո՞վ ելաւ, ու իջաւ. հովը իր ձեռքերուն մէջը ո՞վ

Ն. Ք. Ջ. Ք.
Իբր 700

Հ Գլ. Ժ. 1։ ԺԵ. 21, 25։
Յ Սաղ. ԼԷ. 36։ ԾԲ. 10։ ՂԱ. 8։ ՂԲ. 11։
Շ Գլ. ԺԳ. 24։ ԺԹ. 18։ ԻԲ. 15։ ԻԳ. 13, 14։ Հմր 15։
Ո Ա Թագ. Գ. 1։ Ամով. Ը. 11, 12։
Չ Յօհ. ԺԳ. 17։ Յակ. Ա. 25։
Պ Գլ. ԻԶ. 12։

Ջ Գլ. ԺԵ. 18։ ԻԶ. 21։
Ռ Յոբ. ԻԲ. 29։ Գլ. ԺԵ. 33։ ԺԶ. 12։ Ես. ԿԶ. 2։ Դան. Դ. 30, 31, ևն։ Մատ. ԻԳ. 12։ Ղու. ԺԴ. 11։ ԺԸ. 14։ Գոր. ԺԲ. 23։ Յակ. Դ. 6, 10։ Ա Պետ. Ե. 5։
Ս Ղև. Ե. 1։
Վ Ծն. ԺԲ. 12։ Ի. 2, 11։
Տ Գլ. ԺԹ. 6։

Ր Գլ. ԼԱ. 1։

Ց Սաղ. ՀԳ. 22։
Ւ Կամ՝ սրբոց
Փ Յոհ. Գ. 13։
Ք Յոբ. ԼԸ. 4, ևն։ Սաղ. ՃԴ. 3, ևն։ Ես. Խ. 12, ևն։

Ն. Ք. ԶՃ.
Եբր 700

ե Սաղ. ԺԸ. 6 ։ ԺԸ. 30 ։ ԺԹ. Տ ։ ՃԺԹ. 140 ։
զ Սաղ. ԺԸ. 30 ։ ԺԴ. 11 ։ ՃԺԵ. 9 ։ 10 ։ 11 ։
է Բ Օր. Դ. 2 ։ ԺԲ. 32 ։ Յայտ. ԻԲ. 18 ։ 19 ։
ը Մատ. Զ. 11 ։
թ Բ Օր. Ը. 12 ։ 14 ։ 17 ։ ԼԱ. 20 ։ ԼԲ. 15 ։ Նեեմ. Թ. 25 ։ 26 ։ Յոբ. ԼԱ. 24 ։ 25 ։ 28 ։ Ովս. ԺԳ. 6 ։
ժ Ղուկ. ԺԸ. 11 ։
ի Սաղ. ՃԼԱ. 1 ։ Գլ. Զ. 17 ։
լ Յոբ. ԻԹ. 17 ։ Սաղ. ՃԲ. 2 ։ ԾԷ. 4 ։ Գլ. ԺԲ. 18 ։
խ Սաղ. ԺԴ. 4 ։ Ամով. Ը. 4 ։
ծ Գլ. ԻԷ. 20 ։ Ամբ. Բ. 5 ։
կ Ծն. Թ. 22 ։ Ղև. Ի. 9 ։ Գլ. Ի. 20 ։ ԻԴ. 22 ։

ժողվեց . Ջուրերը իր հանդերձին
մէջը ո՞վ ամփոփեց . երկրիս բոլոր
ծայրերը ո՞վ հաստատեց . անոր ա-
նունը ի՞նչ է , ու անոր որդւոյն ա-
նունը ի՞նչ է . թէ որ գիտես ,
ըսէ՛ ։
5 ե Աստուծոյ ամէն խօսքերը մա-
քուր են . Անիկայ իրեն ապաւի-
նողներուն ասպար է ։
6 զ Դուն անոր խօսքերուն վրայ
բան մի՛ աւելցըներ , որ չըլլայ թէ
քեզ յանդիմանէ , ու դուն ստա-
խօս երևնաս ։
7 Քեզմէ երկու բան կը խնդրեմ .
մեռնելէս առաջ զանոնք ինծմէ մի՛
արգիլեր .
8 Ունայնութիւնը և սուտ խօսքը
ինծմէ հեռացո՛ւր . ինծի աղքա-
տութիւն կամ հարստութիւն մի՛
տար . ըիմ սովորական հացովս
զիս կերակրէ՛ .
9 թ Չըլլայ որ կշտանամ և քեզ ու-
րանամ , ու Տէրը ո՞վ է , ըսեմ .
և չըլլայ որ աղքատանամ , ու գո-
ղութիւն ընեմ , և իմ Աստուծոյս
անունը պարապ տեղը բերանս առ-
նեմ ։
10 Ծառայի մը համար իր տիրոջը
ամբաստանութիւն մի՛ըներ , չըլ-
լայ որ քեզի անէծք տայ , ու դուն
յանցաւոր գտնուիս ։
11 Ցեղ կայ որ՝ իր հայրը կ'անիծէ ,
և իր մայրը չօրհներ ։
12 Ցեղ կայ որ՝ ժ իր աչքին առջևը
մաքուր է , սակայն իր աղտեղու-
թենէն լուացուած չէ ։
13 Ցեղ կայ որ՝ ի անոր աչքերը
խիստ ամբարտաւան են , ու անոր
արտևանունքները բարձրացած են ։
14 լ Ցեղ կայ որ՝ անոր ակռաները
սուրերու պէս են , և անոր ժանիք-
ները դանակներու պէս են , խ աղ-
քատները երկրիս վրայէն՝ ու տը-
նանկները մարդոց մէջէն ուտելու
համար ։
15 Տզրուկը երկու աղջիկ ունի .
Տո՛ւր տո՛ւր , կ'ըսեն ։ Աս իրեքը
չեն կշտանար , ու չորս բան կայ՝ որ
Հերիք է՝ չեն ըսեր .
16 ծ Գերեզմանը , ամուլ արգանդը ,
երկիրը՝ որ ջրով չկշտանար , ու
կրակը՝ որ Հերիք է՝ չըսեր ։
17 կ Ան աչքը՝ որ իր հայրը ծաղր
կ'ընէ , և իր մօրը հնազանդիլը կ'ա-
նարգէ , ձորերուն ագռաւները պի-
տի փորեն , ու զանիկայ արծիւնե-
րուն ձագերը պիտի ուտեն ։
18 Աս իրեք բանը ինծի զարմանալի
կ'երևնայ , և չորս բան կայ որ չեմ
գիտեր .
19 Օդին մէջը արծիւին ճամբան ,
ապառաժի վրայ օձին ճամբան ,
ծովուն մէջը նաւուն ճամբան , ու
աղջկան քով՝ էրիկ մարդուն ճամ-
բան ։
20 Շնացող կնկան ճամբան ալ
այնպէս է . կ'ուտէ ու, բերանը կը
սրբէ , և Չարութիւն չըրի՝ կ'ըսէ ։
21 Իրեք բանի համար երկիրը կը
դողայ , ու չորս բան կայ , որոնք
չկրնար տանիլ .
22 հ Ծառան՝ երբոր թագաւորէ ,
յիմարը՝ երբոր հացով կշտանայ ,
23 Ատելի կնիկը՝ երբոր կարգուի ,
և աղախինը՝ երբոր իր տիկնոջը
ժառանգ ըլլայ ։
24 Երկրիս վրայ չորս բան կայ՝ որ
պզտիկ են , բայց անոնք շատ իմա-
ստուն են .
25 ձ Մրջիւնները զօրաւոր ժողո-
վուրդ մը չեն , բայց իրենց կերա-
կուրը ամառուընէ կը պատրաս-
տեն ։
26 ղ Ճագարները տկար ժողովուրդ
մըն են , բայց իրենց տուները վէ-
մերու մէջ կը շինեն .
27 Մարախները թագաւոր չունին ,
սակայն ամէնը գունդ գունդ դուրս
կ'ելլեն .
28 ճ Մողէսը իր ձեռքերովը պատե-
րուն կը փակչի , ու թագաւորաց
պալատներուն մէջ կը գտնուի ։
29 Աղէկ քալող իրեք բան կայ . և
չորս բան կայ՝ որ գեղեցիկ քա-
լուածք ունի .
30 Առիւծը՝ որ ամէն անասուննե-
րէն զօրաւոր է , ու բնաւ մէկուն
երեսէն ետ չդառնար .
31 † Մէջքը կապած ձին՝ ու նոխազը ,
և թագաւորը՝ որուն ժողովուրդը
իր հետն է ։
32 Թէ որ բարձրանալով յիմարու-
թիւն ըրիր , կամ մէկ չարութիւն
մը մտածեցիր , մ ձեռքդ բերնիդ
վրայ դիր .
33 Վասն զի թէ որ կաթը ծեծես ,
կոգի կ'ելլէ , թէ որ քիթը ճմլես ,
արիւն կ'ելլէ . նոյնպէս թէ որ բար-
կութիւնը գրգռես , կռիւ կ'ելլէ ։

Ն. Ք. ԶՃ.
Եբր 700

հ Գլ. ԺԹ. 10 ։ Ժող. Ժ. 7 ։
ձ Գլ. Զ. 6 ։ Ը ։
ղ Սաղ. ՃԴ. 18 ։
ճ Կամ՝ Սարդը . Եբր. ՍԵՄԱՄԻԹ , որով կ'իմանան մողէսի կամ սարդի տեսակ մը ։
† Կամ՝ Որսական շունը
մ Յոբ. ԽԱ. 5 ։ Խ. 4 ։ Ժող. Ը. 3 ։ Միք. Է. 16 ։

ԳԼ. ԼԱ.

1 Պարկեշտութեան ու բարեխառնութեան մը-
րսյով Լեմուելին խրատները ։ 6 Վշտացած
մարդը մխիթարելու ու պաշտպանելու վրա-
յով ։ 10 Առաքինի կնկան գովութիւնը ու
որպիսութիւնները ։

1 Լեմուէլ թագաւորին խօսքերը՝
ա այն պատգամը՝ որ անոր
մայրը անոր սորվեցուց ։
2 Ի՞նչ ըսեմ ո՛վ որդեակ իմ , ի՞նչ
ըսեմ բ ո՛վ իմ որովայնիս որդին .
ի՞նչ ըսեմ ո՛վ իմ ուխտերուս որդին ։
3 գ Քու զօրութիւնդ կնիկներուն
մի՛ տար , ո՛չ ալ քու ճամբաներդ
դ թագաւորներ բնաջինջ ընողնե-
րուն ։

Եբր 1015
ա Գլ. Լ. 1 ։
բ Ես. ԽԹ. 15 ։
գ Գլ. Ե. 9 ։
դ Բ Օր. ԺԷ. 17 ։ Նեեմ. ԺԳ. 26 ։ Գլ. Է. 26 ։ Ովս. Դ. 11 ։

Ն. Ք. ԳՔ. Իրր 1015

Է Ժող. Ժ. 17։
Ը Ովս. Դ. 11։

4 Ո՛վ Լեմուէլ՝ ^Է թագաւորներուն չվայլեր, գինի խմելը թագաւորներուն չվայլեր, և օղի խմելը իշխաններուն չվայլեր.

5 ^Ը Չըլլայ որ խմեն՝ ու օրէնքը մոռնան, և տառապեալներէն մէկուն դատաստանը ծռեն։

Է Սաղ. ԾԴ. 15։

6 ^Է Օղին կորսուելու վրայ եղողին, ու գինին՝ դառնահոգիներուն տուէք,

7 Որ անոնք խմեն, ու իրենց աղքատութիւնը մոռնան, և իրենց նեղութիւնը մէյմըն ալ չյիշեն։

Լ Տես Յոբ. ԻԹ. 15, 16։
Ր Ա Թագ. ԺԹ. 4։
Եսթ. Դ. 16։
Ժ Ղև. ԺԹ. 15։ Բ Օր. Ա. 16։
Է Յոբ. ԻԹ. 12։ Ես. Ա. 17։ Երեմ. ԻԲ. 16։
Լ Գլ. ԺԲ. 4։ ԺԲ. 22։ ԺԹ. 14։

8 ^Լ Բա՛ց քու բերանդ համր մարդուն համար, ^Ր ու բոլոր անխնամ մնացածներուն դատին համար։

9 Բա՛ց քու բերանդ, ^Ժ արդարութեամբ դատէ, և ^Է աղքատին ու տնանկին դատաստանը տե՛ս։

10 ^Լ Առաքինի կնիկը ո՞վ կրնայ գտնել. անոր գինը գոհարներէն շատ աւելի է։

11 Անոր՝ էրկանը սիրտը անոր վրայ վստահ է, ու աւարի կարօտ չըլլար.

12 Անիկայ իր կենացը բոլոր օրերուն մէջ անոր բարիք կը բերէ, և ո՛չ թէ չարիք.

* Կամ՝ յօժարութեամբ

13 Բուրդ ու քթան կը փնտռէ, և * ուզածը ձեռքովը կը գործէ։

14 Անիկայ վաճառականի նաւերուն կը նմանի. իր հացը հեռու տեղէն կը բերէ։

Խ Հռով. ԺԲ. 11։
Ծ Ղուկ. ԺԲ. 42։

15 Եւ ^Խ անիկայ գիշերով կ'ելլէ, ու ^Ծ տանը մարդիկներուն կերակուր, և իր աղախիններուն բաժին կու տայ։

16 Արտի մը վրայ կը խորհի՝ ու զանիկայ ծախու կ'առնէ, և իր ձեռքերուն պտուղէն այգի կը տնկէ։

17 Իր մէջքը զօրութեամբ կը պնդէ, ու իր բազուկները կը զօրացնէ։

18 Իր վաստակին աղէկ ըլլալը կը հասկընայ. անոր ճրագը գիշերը չմարիր։

19 Իր ձեռքերը իլիկին կ'երկընցընէ, ու ափովը րոքը կը բռնէ։

Կ Եփե. Դ. 28։ Եբր. ԺԳ. 16։

20 ^Կ Ձեռքը աղքատին կը բանայ, ու ձեռքերը կարօտներուն կ'երկընցընէ։

21 Իր տանը մարդոցը համար՝ ձիւնէն չվախնար. քանզի բոլոր ընտանիքը կրկին հանդերձ հագած են։

22 Իրեն ծածկոցներ կը շինէ. իր հանդերձը բեհեզ ու ծիրանի է։

Հ Գլ. ԺԲ. 4։

23 ^Հ Անոր էրիկը կը ճանչցուի դռներուն մէջ՝ երբոր երկրին ծերերուն հետ կը նստի։

24 Կտաւ կը գործէ, ու կը ծախէ, և վաճառականներուն գօտիներ կու տայ։

25 Զօրութիւն ու փառք կը հագնի. ու ետքի օրերը պիտի ուրախանայ։

† Կամ՝ ողորմութեան

26 Իր բերանը իմաստութեամբ կը բանայ, և իր լեզուին վրայ † քաղցրութեան օրէնք կայ։

27 Իր տանը ճամբաները կը քննէ, և ծուլութեան հացը չուտեր։

28 Անոր տղաքը կ'ելլեն, ու զանիկայ երանելի կ'անուանեն. անոր էրիկն ալ զանիկայ կը գովէ, ըսելով.

29 Շատ աղջիկներ առաքինի եղան. բայց դուն ամենէն գերազանց եղար։

30 Վայելչութիւնը սուտ է, ու գեղեցկութիւնը ունայն է. սակայն Տէրոջմէ վախցող կնիկը պիտի գովուի։

31 Տուէ՛ք անոր՝ իր ձեռքին պտուղէն. ու անոր գործքերը դռներու մէջ գովեն զանիկայ։

# ԳԻՐՔ ԺՈՂՈՎՈՂԻ

## ԳԼՈՒԽ Ա

1 Ժողովողը կը ցուցընէ թէ բոլոր մարդկային բաները ունայնութիւն են, 4 որովհետեւ ամէն արարածները սնդադար կ'աշխատին, 9 բայց նոր բան մը յառաջ չեն բերեր, ու ամէն հին բաներն ալ կը մոռցուին. 12 և թէ ինքը այնպէս գտած է իմաստութեան քննութիւններով։

1 Երուսաղէմի մէջ թագաւորող
Դաւիթի որդւոյն ա Ժողովողին
խօսքերը։
2 բ Ունայնութիւն ունայնու-
թեանց, ըսաւ Ժողովողը. ունայ-
նութիւն ունայնութեանց, գ ամէն
բան ունայնութիւն է։
3 դ Ի՞նչ օգուտ կ'ունենայ մարդ՝
արեւուն տակը քաշած բոլոր աշ-
խատանքէն։
4 Մէկ ազգը կ'երթայ, ու մէկալ
ազգը կու գայ. ե բայց երկիրը միշտ
կը կենայ։
5 զ Նաև արեւը կը ծագի, ու արեւը
կը մտնէ, և իր ծագած տեղը ար-
տորալով կը դառնայ։
6 է Հովը դէպ 'ի հարաւ կ'երթայ,
ու դէպ 'ի հիւսիս կը պտըտի. և
հովը աս դին ան դին պտըտելով՝
կ'երթայ իր շրջաններուն համեմատ
կը դառնայ։
7 ը Ամէն գետերը ծովը կ'երթան,
բայց ծովը չլեցուիր. ան տեղը՝ որ
գետերը կ'երթային, նորէն հոն
կ'երթան։
8 Ամէն * խօսքերը կը հատնին".
մարդս խօսելու կարող չէ. թ աչքը
տեսնելով չկշտանար, ու ականջը
լսելով չլեցուիր։
9 ժ Ի՞նչ որ եղած է, նոյնը պիտի
ըլլայ, ու ինչ որ գործուած է,
նոյնը պիտի գործուի. և արեւուն
տակը բնաւ նոր բան մը չկայ։
10 Կա՞յ արդեօք անանկ բան մը՝
որուն համար կրնայ ըսուիլ թէ,
Ասիկայ նոր է. աս մեզմէ առաջ
եղած դարերուն մէջ անիկայ արդէն
եղած էր։
11 Առջի բաներուն յիշատակը չկայ.
ու ետքը ըլլալու բաներուն ալ՝
ետքը եկողներուն մէջ յիշատակը
պիտի չըլլայ։
12 ի Ես Ժողովողս՝ Երուսաղէմի մէջ
Իսրայէլի վրայ թագաւոր եղայ,

Ն. ք. գ. ք. իրր 977
ա Հմր 12. Գլ. է. 27. ժբ. 8, 9, 10.
բ Սաղ. լթ. 5, 6. կբ. 9. ճխդ. 4. Գլ. ժբ. 8.
գ Հռովմ. ը. 20.
դ Գլ. բ. 22. գ. 9.
ե Սաղ. ճդ. 5. ճժթ. 90.
զ Սաղ. ժթ. 5, 6.
է Յօհ. գ. 8.
ը Յոբ. լը. 10. Սաղ. ճդ. 8, 9.
* Կամ՝ բաները կը յոգնին.
թ Առակ. իէ. 20.
ժ Գլ. գ. 15.
ի Հմր 1.

13 Եւ իմ սիրտս երկինքին տակը
բոլոր եղածները իմաստութեամբ
փնտռելու ու քննելու տուի. լ Աս-
տուած աս չար զբաղմունքը մար-
դոց որդիներուն տուաւ, որ անով
զբաղին։
14 Արեւուն տակը բոլոր գործուած
գործքերը տեսայ. և ահա ամէնն
ալ ունայնութիւն, ու † հոգիի
տանջանք" է։
15 խ Ան որ ծուռ է՝ չկրնար շիտ-
կուիլ, ու ան որ պակաս է՝ չկրնար
համրուիլ։
16 Ես իմ սրտիս մէջը խօսեցայ ու
ըսի. Ահա ես մեծցայ, ու իմաս-
տութիւն ստացայ ծ Երուսաղէմի
մէջ ինծմէ առաջ եղողներուն ա-
մէնէն աւելի. և իմ սիրտս շատ
իմաստութիւն ու գիտութիւն տե-
սաւ։
17 կ Եւ իմ սիրտս՝ իմաստութիւնը
ճանչնալու, ու խենթութիւնը և
յիմարութիւնը գիտնալու" տուի.
հասկըցայ որ ասիկայ ալ հոգիի
տանջանք է։
18 Վասն զի հ շատ իմաստութեան
մէջ՝ շատ տրտմութիւն կայ. ու ինք
գիտութիւնը աւելցընողը ինք վիշտը
կ'աւելցընէ։

## ԳԼ. Բ

1 Մարդկային կենաց ունայնութիւնը զբօսանաց մէջ։ 12 Թէեւ իմաստունը յիմարէն աղէկ է, սակայն երկուքին վերջը մէկ է։ 18 Մարդկային աշխատութիւններուն ունայնութիւնը, որ երբոր կը թողուն, չեն գիտեր թէ որո՛ւն համար է։ 24 Մեր աշխատանքին պտուղը վայելելուն պէս աղէկ բան չկայ. բայց ան ալ Աստուծոյ մէկ պարգեւն է։

1 Ես ա իմ սրտիս մէջը ըսի. Եկո՛ւր
հիմա ուրախութեան միջոցով
քեզ փորձեմ. ուստի բարիքներ
վայելէ. և ահա բ ասիկայ ալ ու-
նայնութիւն է։
2 գ Ծիծաղին համար ըսի՝ թէ յի-
մար է, և ուրախութեան համար
թէ՝ Ասոր ըրածը ի՞նչ է։
3 դ Սրտիս մէջը խորհեցայ որ մար-
մինս գինիով զուարթացընեմ, և ի-
մաստութեան առաջնորդութեամ-
բը անմտութիւնը ճանչնամ, որ
տեսնեմ թէ ինչ է մարդոց որդի-
ներուն բարին՝ որ կրնան ընել եր-

Ն. ք. գ. ք. իրր 977
լ Ծն. գ. 19. Գլ. դ. 10.
† Կամ՝ Հովի համար աշխատութիւն
խ Գլ. է. 13.
ծ Գ Թագ. գ. 12, 13. դ. 30. ժ. 7, 23. Գլ. բ. 9.
կ Գլ. բ. 3, 12. է. 23, 25. ա Թես. ե. 21.
հ Գլ. ժբ. 12.
ա Ղուկ. ժբ. 19.
բ Տես Եսա. ծ. 11.
գ Առակ. ժդ. 13. Գլ. է. 6.
դ Գլ. ա. 17.

Ն․ Ք․ գՔ․ իբր 977

կենքին տակը իրենց կենացը բոլոր
օրերուն մէջ ։
4 Մեծ գործքեր ըրի․ ինծի տու-
ներ շինեցի, ու ինծի այգիներ տըն-
կեցի․
5 Ինծի պարտէզներ և դրախտներ
շինեցի, ու անոնց մէջը ամէն տե-
սակ պտուղ բերող ծառեր տնկեցի․
6 Ինծի ջուրի աւազաններ շինեցի,
որ անոնցմէ՝ ծառ բուսցընող ան-
տառը ոռոգուի․
7 Ծառաներ ու աղախիններ ստա-
ցայ, և իմ տանս մէջը ծնած ծա-
ռաներ ունեցայ․ ու շատ արջառ-
ներ և հօտեր ունեցայ, ինծմէ ա-
ռաջ Երուսաղէմի մէջ եղողներուն
ամենէն աւելի ։
8 ԸՆաև ինծի՝ արծաթ ու ոսկի, և
թագաւորներու ու գաւառներու
գանձեր դիզեցի․ ինծի այր և կին
երգեցողներ ստացայ, ու մարդոց
որդիներուն վայելչութիւնները
*ու ամէն տեսակ շքեղութիւն՛՛ ։
9 Եւ Ղինծմէ առաջ Երուսաղէմի
մէջ եղողներուն ամենէն մեծ եղայ
ու բարգաւաճեցայ․ իմաստու-
թիւնս ալ իմ քովս կը կենար ։
10 Եւ իմ աչքերուս ամէն ցանկու-
թիւնը՝ անոնցմէ չարգիլեցի, ու իմ
սիրտս՝ ամէն տեսակ ուրախութենէ
զուրկ չթողուցի․ հապա իմ սիրտս
իմ բոլոր աշխատութիւններէս ու-
րախացաւ․ և Էիմ բոլոր աշխա-
տութիւններէս՝ բաժինս ասիկայ
էր ։
11 Ու ես՝ իմ ձեռքերուս բրած ա-
մէն գործքերուն, ու ընելու համար
իմ քաշած ամէն աշխատանքիս
նայեցայ, և ահա ամէնը Ըունայնու-
թիւն ու հոգիի տանջանք էր, ու
արևուն տակը օգուտ չկար ։
12 Եւ ես դարձայ իմաստութիւնը
տեսնելու, Թնաև յիմարութիւնը,
ու անմտութիւնը․ վասն զի թա-
գաւորին ետևէն եկող մարդը ի՞նչ
կրնայ ընել․ ինչ որ արդէն բրած
են ։
13 Ուստի տեսայ որ իմաստութիւնը
անմտութենէն օգտակար է, ինչ-
պէս որ լոյսը խաւարէն օգտակար
է ։
14 Ժ Իմաստունին աչքերը իր գլխուն
վրայ է, իսկ անմիտը խաւարի մէջ
կը քալէ․ բայց ես հասկըցայ որ
Իանոնց ամենուն պատահած դի-
պուածը մէկ է ։
15 Ան ատենը իմ սրտիս մէջը ըսի․
Որովհետև անմիտին պատահածը
ինծի ալ պիտի պատահի, ուրեմն
ես ինչո՞ւ համար աւելի իմաստուն
եղայ․ ապա պատճառաւ իմ սրտիս
մէջը ըսի որ աս ալ ունայնութիւն
է․
16 Վասն զի ինչպէս անմիտին՝ նմա-
նապէս իմաստունին ալ յաւիտեան
յիշատակը չկայ․ ինչու որ հիմա
եղած բաներուն ամէնը ապագայ
ժամանակին մէջ պիտի մոռցուի․
ու իմաստունը ի՞նչպէս կը մեռնի․
անմիտին պէս ։
17 Անոր համար ես կեանքէս զզուե-
ցայ․ վասն զի արևուն տակը եղած
գործքերը ինծի գէշ երևցան․ քան-
զի ամէնը ունայնութիւն ու հոգիի
տանջանք է ։
18 Եւ ես՝ արևուն տակը քաշած
բոլոր աշխատութիւնէս զզուեցայ․
քանզի Լինծմէ ետքը գալու մար-
դուն պիտի թողում զանիկայ․
19 Ու ո՞վ գիտէ թէ անիկայ իմաս-
տուն պիտի ըլլայ, թէ անմիտ․
բայց պիտի տիրէ իմ բոլոր աշխա-
տութիւններուս վրայ, որ արևուն
տակը աշխատեցայ, ու անոնց մէջը
իմաստութիւն ցուցուցի․ ասիկայ
ալ ունայնութիւն է ։
20 Եւ ես դարձայ, որ արևուն տա-
կը քաշած բոլոր աշխատանքիս վը-
րայով իմ սրտէս յոյսս կտրեմ ։
21 Վասն զի մարդ կայ՝ որուն աշ-
խատութիւնը իմաստութեամբ,
գիտութեամբ և յաջողութեամբ
կ'ըլլայ․ բայց անոր մէջը չաշխա-
տող մարդուն իբրև բաժին կու
տայ․ ասիկայ ալ ունայնութիւն
ու մեծ չարիք մըն է․
22 Խ Վասն զի մարդը՝ արևուն տակը
քաշած իր բոլոր աշխատանքէն,
ու սրտին տանջանքէն ի՞նչ օգուտ
կ'ունենայ․
23 Քանզի անոր բոլոր օրերը Ծվիշ-
տերով՝ ու գործքը տրտմութեամբ
լեցուն են․ անոր սիրտը գիշերը
անգամ հանգստութիւն չգտներ․
ասիկայ ալ ունայնութիւն է ։
24 Կ Մարդս ուտելէն ու խմելէն և իր
աշխատանքովը իր հոգին զուարճա-
ցընելէն 'ի զատ ուրիշ աղէկութիւն
մը չունի․ ես ասիկայ ալ տեսայ
որ Աստուծոյ ձեռքովը կ'ըլլայ ։
25 Վասն զի †ինծմէ զատ՛՛ ո՞վ կրնայ
ուտել, և ո՞վ կրնայ զուարճանալ ։
26 Քանզի Աստուած՝ իր առջևը հա-
ճելի եղող մարդուն՝ իմաստու-
թիւն, գիտութիւն և ուրախու-
թիւն կու տայ․ բայց մեղաւորին
զբաղմունք կու տայ, որ անիկայ
ստացուածք ժողվէ ու դիզէ, որ
Հ Աստուծոյ առջևը հաճելի եղողին
տայ․ ասիկայ ալ ունայնութիւն
ու հոգիի տանջանք է ։

Ն․ Ք․ գՔ․ իբր 977

Ե Գ Թագ․ Թ․ 28 ; Ժ․ 10, 14, 21, ԻԷ ;
* Կամ՝ մեծ առատութիւնով ;
Ղ Գլ․ Ա․ 16 ;
Է Գլ․ Գ․ 22 ; Ե․ 18 ; Թ․ 9 ;
Ը Գլ․ Ա․ 3, 14 ;
Թ Գլ․ Ա․ 17 ; Է․ 25 ;
Ժ Առակ․ ԺԷ․ 24 ; Գլ․ Ը․ 1 ;
Ի Սաղ․ ԽԹ․ 10 ; Գլ․ Թ․ 2, 3, 11 ;
Լ Սաղ․ ԽԹ․ 10 ;
Խ Գլ․ Ա․ 3 ; Գ․ 9 ;
Ծ Յոբ․ Ե․ 7 ; ԺԴ․ 1 ;
Կ Գլ․ Գ․ 12, 13, 22 ; Ե․ 18 ; Ը․ 15 ;
† Կամ՝ առանց Անոր
Հ Յոբ․ ԻԷ․ 16, 17 ; Առակ․ ԻԲ․ 8 ;

## ԳԼ․ Գ

1 Ժամանակին փոփոխութիւններովը մարդոց աշխատութեանցը վրայ ունայնութիւն կ'աւելնայ ; 11 Աստուծոյ գործքերուն մէջ գե-

Ն · Ք · ՉՔ · Իբր 977

բազմութիւն մը կայ · 16 սակայն վերջին օրը Աստուած պիտի դատէ մարդոց գործքերը, թէև հիմա անոնք անպատիժ պէս են :

1 Ամէն բանին ատենը կայ, ու [ա] երկինքին տակը եղող ամէն [*] գործին ժամանակը ·

2 Ծնանելու ժամանակ, և [բ] մեռնելու ժամանակ · տնկելու ժամանակ, ու տնկուածը խլելու ժամանակ ·

3 Մեռցնելու ժամանակ, և բժշկելու ժամանակ · փլցնելու ժամանակ, ու շինելու ժամանակ ·

4 Լալու ժամանակ, և ծիծաղելու ժամանակ · սուգ ընելու ժամանակ, ու կաքաւելու ժամանակ ·

5 Քարեր դուրս նետելու ժամանակ, և քարեր ժողվելու ժամանակ · գրկելու ժամանակ, ու [գ] գրկելէն հեռանալու ժամանակ ·

6 Փնտռելու ժամանակ, և կորսնցնելու ժամանակ · պահելու ժամանակ, ու դուրս ձգելու ժամանակ ·

7 Պատռելու ժամանակ, և կարելու ժամանակ · [դ] լռելու ժամանակ, ու խօսելու ժամանակ ·

8 Սիրելու ժամանակ, և [ե] ատելու ժամանակ · պատերազմի ժամանակ, ու խաղաղութեան ժամանակ :

9 [զ] Աշխատողին՝ իր քաշած աշխատանքէն ի՞նչ օգուտ կ'ըլլայ :

10 [է] Տեսայ ան զբաղմունքը՝ որ Աստուած մարդոց որդիներուն տուաւ, որ անով զբաղին :

11 Անիկայ ամէն բան իր ժամանակին վայելուչ ըրաւ · ու աշխարհս ալ անոնց սրտին մէջը դրաւ · բայց [ը] Աստուծոյ ըրած գործքը մարդ չկրնար սկիզբէն մինչև վերջը գտնել :

12 Ա· [թ] գիտեմ որ ուրախ ըլլալէն ու կենդանութեան ատենը աղէկութիւն ընելէն 'ի զատ՝ ուրիշ աղէկ բան մը չկայ անոնց մէջ :

13 Ու նաև [ժ] ամէն մարդուն ուտելը ու խմելը, և իր բոլոր աշխատութենէն բարիք վայելելը Աստուծոյ պարգևն է :

14 Գիտեմ որ Աստուծոյ ամէն ըրածը յաւիտեան պիտի մնայ · [ժա] անոր վրայ բան մը աւելցնել, կամ անկէ պակսեցնել կարելի չէ · և Աստուած զանիկայ ըրաւ, որ իր երեսէն վախնան :

15 [ժբ] Ի՛նչ որ եղած է, հիմա ալ կայ · ու ի՛նչ՝ որ պիտի ըլլայ, արդէն եղած է · և Աստուած անցածը կը փնտռէ :

16 Ու նաև արևուն տակը տեսայ որ [ժգ] դատաստանի տեղը՝ ամբարշտութիւն, և արդարութեան տեղը՝ անօրէնութիւն կար :

ա Հմր 17 : Գլ · ը · 6 : * Կամ՝ դիտաւորութեան · բ Եբր · թ · 27 : գ Յովէլ · բ · 16 : ա Կոր · է · 5 : դ Ամով · ե · 13 : ե Ղու · ժդ · 26 : զ Գլ · ա · 3 : է Գլ · ա · 13 : ը Գլ · ը · 17 : Հռով · ժա · 33 : թ Հմր 22 : ժ Գլ · բ · 24 : ժա Յակ · ա · 17 : ժբ Գլ · ա · 9 : ժգ Գլ · ե · 8 :

17 Ես իմ սրտիս մէջը ըսի թէ՝ [ժդ] Աստուած պիտի դատէ արդարը ու ամբարիշտը · վասն զի [ժե] ամէն դիտաւորութիւն ու ամէն գործ ժամանակ ունի հոն :

18 Ես իմ սրտիս մէջը ըսի՛ մարդոց որդիներուն վիճակին վրայով, թէ Աստուած զանոնք պիտի փորձէ · ու պիտի տեսնեն՝ որ իրենք անասուններ են :

19 [ժզ] Վասն զի մարդոց որդիներուն պատահածը՝ և անասուններուն պատահածը՝ մէկ է · մէկը ինչպէս կը մեռնի, մէկալն ալ այնպէս կը մեռնի · ու ամենուն շունչը մէկ է · և մարդը անասունէն աւելի բան մը չունի · վասն զի ամէնը ունայնութիւն է :

20 Ամէնը մէկտեղ կ'երթայ · [ժէ] ամէնը հողէն եղաւ, ու ամէնը հող կը դառնայ :

21 [ժը] Ո՞վ գիտէ թէ մարդոց որդիներուն հոգիները վեր կ'ելլեն, և անասնոց ոգիները վար գետինը կ'իջնեն :

22 [ժթ] Ու տեսայ որ՝ մարդս իր գործքերովը ուրախ ըլլալէն 'ի զատ ուրիշ աղէկութիւն մը չունի · [ի] քանզի անոր բաժինը ան է · [իա] վասն զի ո՞վ պիտի տանի զանիկայ որ տեսնէ թէ իրմէ ետքը ինչ պիտի ըլլայ :

Ն · Ք · ՉՔ · Իբր 977 — ժդ Հռով · բ · 6 · 7 · 8 · ա : բ Կոր · ե · 10 : բ Թես · ա · 6 · 7 : ժե Հմր 1 : ժզ Սաղ · խթ · 12 · 20 : հգ · 22 : Գլ · բ · 16 : ժէ Ծն · գ · 19 : ժը Գլ · ժբ · 7 : ժթ Հմր 12 : Գլ · բ · 24 : ե · 18 : ժա · 9 : ի Գլ · բ · 10 : իա Գլ · զ · 12 : ը · 7 : ժ · 14 :

## ԳԼ · Դ

1 Մարդուն ունայնութիւնը կ'աւելնայ հարստահարութեամբ, 4 նախանձով, 5 ծուլութեամբ, 7 ագահութեամբ, 9 առանձնակեցութեամբ, 13 կամակորութեամբ :

1 Ու ես դարձայ, ու տեսայ արևուն տակը եղած բոլոր [ա] զրկանքները · և ահա զրկուածներուն աչքը արցունք կար · բայց անոնք մխիթարող չունէին · ու անոնց զրկանք ընողներուն ձեռքը ոյժ կար · բայց անոնց մխիթարութիւն տուող չկար :

2 [բ] Ու ես մեռածները՝ արդէն մեռածները՝ մինչև հիմա ապրող կենդանիներէն աւելի գովեցի :

3 [գ] Բայց ան որ մինչև հիմա եղած չէ՝ երկուքէն ալ աղէկ է · վասն զի անիկայ արևուն տակը եղած չարութիւնը չտեսաւ :

4 Ու ես ամէն աշխատութիւնը, և ամէն յաջող գործքը տեսայ, որ անոնց համար մարդ իր ընկերէն կը նախանձի · ասիկայ ալ ունայնութիւն ու հոգիի տանջանք է :

5 [դ] Անմիտը իր ձեռքերը կը ծալլէ, ու իր միսը կ'ուտէ :

6 [ե] Աւելի աղէկ է մէկ լեցուն ձեռքը հանգստութեամբ, քան թէ երկու լեցուն ձեռքը՝ որ աշխատանքով ու հոգիի տանջանքով է :

ա Գլ · գ · 16 : ե · 8 : բ Յոբ · գ · 17, ա : գ Յոբ · գ · 11 · 16 · 21 : Գլ · զ · 3 : դ Առակ · զ · 10 : իդ · 33 : ե Առակ · ժե · 16 · 17 : ժզ · 8 :

Ն. Ք. գՔ. իրր 977

7 Եւ ես դարձայ՝ ու արեւուն տա-
կը ունայնութիւն տեսայ ։
8 Մէկ մարդ մը կայ՝ որ երկրորդ
չունի . ո՛չ տղայ ունի և ոչ եղ-
բայր . բայց անոր ամէն աշխատու-
թիւնը վախճան չունի . ու անոր
աչքերը հարստութեամբ չեն կըշ-
տանար . Եւ չըսեր թէ՝ Ես որո՞ւն
համար կ'աշխատիմ , ու իմ հոգիս
բարիքէ կը զրկեմ . ասիկայ ալ
ունայնութիւն ու չար զբաղմունք
է ։
9 Երկուքը՝ մէկէն աղէկ է . վասն
զի անոնց աշխատանքը աղէկ
վարձք ունի .
10 Քանզի թէ որ իյնան , մէկզմէկ
կը վերցընեն . բայց վա՜յ իյնող մէ-
կուն՝ որ զինքը վերցընող երկրորդ
մը չունի ։
11 Ու երկու մարդ մէկտեղ պառկե-
լով՝ կը տաքնան . բայց մինակը
ի՞նչպէս կրնայ տաքնալ ։
12 Եւ թէ որ մէկը անոնց բռնու-
թիւն ընէ , երկուքը կրնան անոր
դէմ դնել . ու եռեքպատիկ դեր-
ձանը դիւրաւ չկտրուիր ։
13 Աղէկ է աղքատ ու իմաստուն
տղան , քան թէ ծեր ու անմիտ
թագաւորը՝ որ ալ չգիտեր խրա-
տուիլ ։
14 Քանզի մէկը բանտէն կ'ելլէ՝ որ
թագաւորէ , բայց ուրիշ մը որ
* թագաւոր ծնած է , աղքատ կ'ըլ-
լայ ։
15 Տեսայ արեւուն տակը քալող ա-
մէն կենդանիները ան տղուն հետ՝
որ անոր երկրորդն էր , ու ա-
նոր տեղը պիտի անցնէր .
16 † Անոնց առջեւը կեցող՝ բոլոր ժո-
ղովուրդը անթիւ էր . սակայն ետ-
քը եկողները անկէ պիտի չուրա-
խանան . ասիկայ ալ ունայնու-
թիւն ու հոգիի տանջանք է ։

ԳԼ. Ե

1 Աստուածային պաշտօնը կատարելու մէջ , 8 հարստահարութեան դէմ տրտնջելու մէջ , 9 և հարստութեան մէջ ունայնութիւններ ։ 18 Հարստութեան մէջ երջանկութիւնը Աստուծոյ պարգեւն է ։

1 Երբոր Աստուծոյ տունը կ'եր-
թաս , ա ոտքիդ զգուշութիւն
ըրէ . և աւելի մօտիկ ըլլալու մտե-
ցիր , Բ քան թէ անմիտներու պէս
մատուցանելու . վասն զի անոնք
չեն գիտեր թէ չարութիւն կ'ընեն ։
2 Բերնովդ մի՛ աճապարեր . և քու
սիրտդ Աստուծոյ առջեւը խօսք
հանելու չարտորայ . քանզի Աս-
տուած երկինքն է , ու դուն երկրի
վրայ ես . Գ անոր համար Դ քու խօս-
քերդ քիչ ըլլան ։
3 Վասն զի երազը՝ շատ զբաղմուն-
քէն յառաջ կու գայ , ու Դ յիմարին
ձայնը՝ շատ խօսքերէն ։
4 Ե Երբոր Աստուծոյ ուխտ կ'ընես ,
զանիկայ կատարելը մի՛ ուշացըներ .
քանզի Աստուած անմիտներուն չը-
հաճիր . Զ ըրած ուխտդ կատարէ ։
5 Է Աղէկ է որ ուխտ չընես , քան
թէ ուխտ ընես , ու չկատարես ։
6 Թող մի՛ տար որ քու բերանդ
մարմնոյդ մեղք գործել տայ , Ըև
հրեշտակին առջեւը մի՛ ըսեր թէ՝
Սխալանք եղաւ . ինչո՞ւ Աստուած
քու խօսքիդ համար բարկանայ ,
ու ձեռքերուդ գործքը աւրէ ։
7 Վասն զի երազներուն շատու-
թեանը մէջ , և խօսքերուն շա-
տութեանը մէջ՝ ունայնութիւններ
ալ կայ . բայց Թ դուն Աստուծմէ
վախցիր ։
8 Թէ որ գաւառի մէջ Ժ աղքատին
եղած զրկանքը ու իրաւանց և ար-
դարութեան ծռուիլը տեսնես , աս
բանիս վրայ մի՛ զարմանար . վասն
զի Ի բարձրերուն վրայ բարձր եղողը
կը դիտէ . և ասոնցմէ բարձրը կայ ։
9 Երկիրը ամենուն օգտակար է .
թագաւորին անգամ արտէն ծառա-
յութիւն կ'ըլլայ ։
10 Արծաթ սիրողը արծաթէն չկըշ-
տանար , ո՛չ ալ հարստութիւն սի-
րողը իրեն բերքէն . ասիկայ ալ
ունայնութիւն է ։
11 Երբոր բարիքը կը շատնայ , ու-
տողներն ալ կը շատնան . ուրեմն
զանիկայ ունեցողներուն՝ աչքով
տեսնելէն 'ի զատ ի՞նչ օգուտ կ'ըլ-
լայ ։
12 Քաղցր է աշխատող մարդուն
քունը՝ թէ՛ շատ և թէ քիչ ուտէ .
բայց հարուստին ‡ կուշտ ըլլալը՝
չթողուր որ անիկայ հանգիստ
քնանայ ։
13 Լ Արեւուն տակը տեսայ որ մէկ
գէշ ցաւ մը կայ , այսինքն ան հարըս-
տութիւնը որ իր տիրոջը ձախոր-
դութեանը համար պահուած է .
14 Եւ ան հարստութիւնը մէկ ձա-
խորդ ‖ դիպուածով մը կը կորսուի .
ու ինքը տղայ կը ծնանի , և անոր
ձեռքը բան մը չկայ ։
15 Խ Ինչպէս որ իր մօրը որովայնէն
ելաւ , այնպէս մերկ կը դառնայ .
ինչպէս որ եկաւ , այնպէս կ'երթայ ,
ու իր աշխատութենէն բան մը
չառներ որ իր հետը տանի ։
16 Աս ալ գէշ ցաւ մըն է , որ ինչ-
պէս եկաւ , ճիշդ այնպէս կ'երթայ .
և Ծ ի՞նչ օգուտ կ'ըլլայ անոր՝ Կ որ
հովի համար կ'աշխատի ։
17 Անիկայ իր բոլոր օրերը՝ Հ խա-
ւարի մէջ կ'ուտէ մեծ տրտմու-
թեամբ , հիւանդութեամբ և
սրտմտութեամբ ։

Ն. Ք. գՔ. իրր 977

ՂԱռակ. իէ. 20։ Ա Յով. ը. 16։ Ե Սաղ. լԹ. 6։
* Կամ՝ իր Թագաւորութեանը մէջ
† Կամ՝ Անոնցմէ առաջ եղող
ա Տես Ել. գ. 5։ Եսա. ա. 12, 13։ Բ Թագ. ժե. 22։ Ովս. Զ. 8։ Առակ. ժե. 8։ Իս. 27։ Ովս. զ. 6։
Գ Առակ. ժ. 19։ Մատ. զ. 7։

Դ Առակ. ժ. 19։
Ե Թուոց. լ. 2։ Բ Օր. իգ. 21, 22, 23։ Սաղ. ծ. 14։ Հզ. 11։
Զ Սաղ. կզ. 13, 14։
Է Առակ. ի. 25։ Գործ. ե. 4։
Ը Ակոր. ժա. 10։
Թ Գլ. ժբ. 13։
Ժ Գլ. գ. 16։
Ի Սաղ. ժբ. 5։ ձբ. 11։ ձբ. 1։
‡ Կամ՝ առատութիւնը
Լ Գլ. զ. 1։
‖ Կամ՝ գործով
Խ Յոբ. ա. 21։ Սաղ. խԹ. 17։ Ա Տիմ. զ. 7։
Ծ Գլ. ա. 3։
Կ Առակ. ժա. 29։
Հ Սաղ. ճիէ. 2։

Ն. Ք. ԴԲ. Իբր 977

18 Ահա՛ այս աղէկութիւնը տեսայ, ձ որ վայելուչ է ուտել ու խմել, և Աստուծոյ մէկու մը տուած կենացը բոլոր օրերուն մէջ՝ արեւուն տակը իր քաշած բոլոր աշխատանքին բարիքը վայելել. ղ վասն զի անոր բաժինը ասիկայ է։

ձ Գլ. բ. 24 · գ. 12, 13, 22 · թ. 7 · ժա. 9 · ա Տիմ. զ. 17։
ղ Գլ. բ. 10 · գ. 22։

19 Նաև ճ որ մարդուն որ Աստուած հարստութիւն ու ստացուածք կու տայ, ու անկէ ուտելու, և բաժինը առնելու, ու իր աշխատանքէն ուրախանալու իշխանութիւն կու տայ, ասիկայ Աստուծոյ պարգեւն է։

ճ Գլ. բ. 24 · գ. 13 · զ. 2։

20 Քանզի անիկայ իր կենացը օրերը շատ չյիշեր. վասն զի Աստուած անոր սրտին ուրախութիւնովը անոր պատասխան կու տայ։

## ԳԼ. Զ

1 Չգործածուած հարստութեան։ 3 առանց հարստութեան զաւակներ ունենալու, 6 և հարստութենէ զրկուած ծերութեան ունայնութիւնը։ 9 Փոփոխական բաղձանքներուն ունայնութիւնը։

1 մ Արեւուն տակը տեսայ որ չարիք մը կայ. ու անիկայ մարդոց մէջը շատ կը գտնուի։

մ Գլ. ե. 13։

2 Մարդ մը՝ որուն Աստուած հարստութիւն ու ստացուածք և փառք կու տայ, յ այնպէս որ իր հոգիին ցանկացած բաներէն պակսութիւն մը չունենար. ն բայց Աստուած անոր իշխանութիւն չտար անկէ ուտելու. հապա զանիկայ օտար մարդ կ'ուտէ. աս ալ ունայնութիւն ու գէշ ցաւ մըն է։

յ Յոբ. իա. 10 · Սաղ. ժէ. 14 · Հգ. 7։
ն Ղու. ժբ. 20։

3 Թէ որ մարդ հարիւր զաւակ ծնանի, ու շատ տարիներ ապրի, և անոր տարիներուն օրերը շատ ըլլայ, ու անոր հոգին բարութենէ չկշտանայ, և շ անիկայ թաղում ալ չունենայ, կ'ըսեմ որ ո վիժածը անկէ աղէկ է.

շ Դ Թագ. թ. 35 · Եսա. ժդ. 19, 20 · Երեմ. իբ. 19։
ո Յոբ. գ. 16 · Սաղ. ծը. 8 · Գլ. դ. 3։

4 Վասն զի անիկայ ունայնութեամբ կու գայ, ու խաւարով կ'երթայ, և անունը խաւարի մէջ կը ծածկուի.

5 Արեւն ալ չտեսաւ, ու բան մը չգիտցաւ. ասիկայ մէկալէն աւելի հանգիստ է։

6 Իսկ անիկայ թէև երկու հազար տարի ապրի, ու աղէկութիւն չըտեսնէ, միթէ ամէնքը մէկ տեղ չե՞ն երթար։

7 չ Մարդուն բոլոր աշխատութիւնը իր բերնին համար է. սակայն անոր հոգին չկշտանար։

չ Առակ. ժզ. 26։

8 Քանզի իմաստունը՝ անմիտէն աւելի ի՞նչ բան ունի. կենդանիներուն մէջը քալել գիտցող աղքատը ի՞նչ օգուտ կ'ունենայ։

9 Աչքերով տեսնելը՝ հոգիով * փափաքելէն աղէկ է. ասիկայ ալ ունայնութիւն ու հոգիի տանջանք է։

* Եբր. քալելէն

10 Ինչ որ եղաւ, արդէն անոր անունը դրուած է. և յայտնի է թէ մարդ է. պ ու անիկայ իրմէ զօրաւորին հետ վիճելու կարող չէ։

պ Յոբ. թ. 32 · Եսա. խե. 9 · Երեմ. խթ. 10։

11 Որովհետև ունայնութիւն շատցնող շատ բաներ կան, մարդուն ի՞նչ կը մնայ։

12 Քանզի ո՞վ գիտէ թէ ո՛ր բանը աղէկ է կենդանի մարդուն՝ ջ ստուերի պէս անցուցած իր ունայն կենացը բոլոր օրերուն մէջը. վասն զի ռ մարդուն ո՞վ պիտի յայտնէ, թէ իրմէ ետքը արեւուն տակը ի՞նչ պիտի ըլլայ։

ջ Սաղ. ճբ. 11 · ճթ. 23 · ճխդ. 4 · Յակ. դ. 14, 15։
ռ Սաղ. լթ. 6 · Գլ. ը. 7։

## ԳԼ. Է

1 Ասոնք են որ ունայնութեան դէմ կը դնեն. բարի համբաւ, 2 սուգ, 7 համբերութիւն, 11 իմաստութիւն։ 23 Իմաստութիւն ստանալուն դժուարութիւնը։

1 ս Բարի անունը՝ հոտաւէտ եղէն, ու մահուան օրը՝ ծննդեան օրէն աղէկ է։

ս Առակ. իբ. 1։

2 Սուգի տուն երթալը կոչունքի տուն երթալէն աղէկ է. վասն զի ամէն մարդուն վախճանը ան է. ու կենդանի եղողը զանիկայ իր սրտին մէջը կը դնէ։

3 † Տրտմութիւնը ծիծաղելէն աղէկ է. տ վասն զի երեսին տրտմութեամբը սիրտը ‡ կը զուարճանայ։

† Կամ՝ Սրտմտութիւնը
տ բ Կոր. է. 10։
‡ Կամ՝ բարի կ'ըլլայ։

4 Իմաստուններուն սիրտը՝ սուգի տունը, իսկ յիմարներուն սիրտը՝ ուրախութեան տունը կ'ըլլայ։

5 ր Իմաստունին յանդիմանութիւնը լսելը՝ յիմարներուն երգը լսելէն աղէկ է։

ր Տես Սաղ. ճխա. 5 · Առակ. ժգ. 18 · ժե. 31, 32։

6 ց Վասն զի ինչպէս է փուշերուն ձայնը կաթսային տակը, յիմարներուն ծիծաղն ալ այնպէս է. ասիկայ ալ ունայնութիւն է։

ց Սաղ. ճժը. 12 · Գլ. բ. 2։

7 Իրաւ որ բռնութիւնը՝ իմաստունը յիմար կ'ընէ, ւ ու պարգեւը մարդուն սիրտը կ'ապականէ։

ւ Ել. իգ. 8 · բ Օր. ժզ. 19։

8 Մէկ բանին վախճանը՝ սկիզբէն աղէկ է. ու փ երկայնամիտ ոգին՝ հպարտ ոգիէն աղէկ է։

փ Առակ. ժդ. 29։

9 ք Մի՛ արտորար հոգիովդ բարկանալու. քանզի բարկութիւնը յիմարներուն ծոցին մէջը կը հանգչի։

ք Առակ. ժդ. 17 · ժզ. 32 · Յակ. ա. 19։

10 Մի ըսեր թէ՝ ինչո՞ւ համար առջի օրերը աս օրերէն աղէկ էին. վասն զի աս բանիս համար ըրած հարցմունքդ իմաստութեամբ չէ։

11 Իմաստութիւնը՝ ժառանգութեան պէս աղէկ է, ու օ արեւը տեսնողներուն օգտակար է։

օ Գլ. ժա. 7։

12 Վասն զի իմաստութիւնը հովանաւորութիւն կ'ընէ, և արծաթը հովանաւորութիւն կ'ընէ. բայց գիտութեան օգուտը աս է, որ ի-

Ն. Ք. ՉՔ. Իբր 977

մաստութիւնը՝ զինքը ստացողները կ'ապրեցընէ ։

բ Տես Յոբ. ժբ. 14։ Գլ. ա. 15։ Ես. ժդ. 27։

13 Աստուծոյ գործքին նայէ . վասն զի բանոր ծռածը ո՞վ կրնայ շիտկել ։

դ Գլ. գ. 4։ Բ Օր. իը. 47։

14 դ Աղէկ օրը աղէկութեամբ անցուր, ու գէշ օրը զգուշութիւն ըրէ . և Աստուած իրարու դիմացը դրաւ զանոնք, որ մարդ իրմէ ետքը բան մը չգտնէ ։

ե Գլ. ը. 14։

15 Իմ ունայնութեան օրերուս մէջը ամէնը տեսայ . ե արդար կայ՝ որ իր արդարութեանը մէջ կը կորսուի, և ամբարիշտ կայ՝ որ իր ամբարշտութեանը մէջ իր կեանքը կ'երկընցընէ ։

զ Առակ. իե. 16։ է Հռով. ժբ. 3։

16 զ Խիստ շատ արդար մի՛ ըլլար . է ու ինքզինքդ չափէ դուրս իմաստուն մի՛ կարծեր . ինչո՞ւ համար քեզ կորսընցընես ։

ը Յոբ. ժե. 32։ Սաղ. ծե. 23։ Առակ. ժ. 27։

17 Խիստ ամբարիշտ մի՛ ըլլար, ու յիմար մի՛ ըլլար . ը ինչո՞ւ համար ատենդ չեկած մեռնիս ։

18 Աղէկ է որ մէկը բռնես, ու մէկալէն ալ ձեռքդ չքաշես . վասն զի Աստուծմէ վախցողը ամենէն ազատ կ'ելլէ ։

թ Առակ. իա. 22։ իդ. 5։ Գլ. թ. 16, 18։

19 թ Իմաստութիւնը աւելի ոյժ կու տայ իմաստունին, քան թէ քաղաքի մը մէջ եղող տասը իշխանը՝ ան քաղաքին ։

ժ Գ Թագ. ը. 46։ Բ Մն. զ. 36։ Առակ. ի. 9։ Հռով. գ. 23։ Ա Յոհ. ա. 8։

20 ժ Իրաւ որ երկրի վրայ արդար մարդ չկայ՝ որ աղէկութիւն ընէ, ու մեղք չգործէ ։

21 Արդ՝ քու սիրտդ ամէն խօսուած խօսքերուն մի՛ տար, որ քու ծառայիդ քեզի անէծք տալը չլսես .

22 Վասն զի քու սիրտդ գիտէ որ դուն ալ շատ անգամ ուրիշներուն անէծք տուած ես ։

ի Հռով. ա. 22։

23 Ասոնց ամէնը իմաստութեամբ փորձեցի . ի ըսի թէ՝ Ես իմաստուն ըլլամ . բայց անիկայ ինծմէ հեռու էր ։

լ Յոբ. իը. 12, 20։ ա Տիմ. զ. 16։ ծ Հռով. ժա. 33։

24 լ Հեռուն ինչ ըլլալը, ու ծ խիստ խորունկ եղածը ո՞վ կը գտնէ ։

կ Գլ. ա. 17։ բ. 12։

25 կ Ես իմ սրտովս պտըտեցայ՝ որ գիտնամ, և քննեմ, ու փնտռեմ իմաստութիւնը ու հանճարը . և յիմարութեան չարութիւնը ու անմտութիւնը, և խենթութիւնը գիտնամ .

հ Առակ. ե. 3, 4։ իբ. 14։

26 հ Ու ես մահուանէ դառն գտայ ան կնիկը՝ որուն սրտին մէջը ցանցեր և ուռկաններ, ու ձեռքերուն մէջը կապանքներ կան . Աստուծոյ առջևը հաճելի եղողը անկէ կ'ազատի . բայց մեղաւորը անկէ կը բռնուի ։

ձ Գլ. ա. 1, 2։

27 Ահա ասիկայ գտայ, կ'ըսէ ձ Ժողովողը, մէկիկ մէկիկ համրելով՝ հաշիւը գտնելու համար .

28 (Որ հոգիս տակաւին կը փնտռէ, բայց չեմ կրնար գտնել .) ղ Էրիկ մարդ՝ հազարէն մէկ գտայ . բայց բոլոր ասոնց մէջը մէկ կնիկ մը չըգտայ ։

ղ Յոբ. լգ. 23։ Սաղ. ժբ. 1։

29 Ահա միայն ասիկայ գտայ՝ ճ որ Աստուած մարդը ուղիղ ստեղծեց . բայց մ անոնք շատ հնարքներ փընտռեցին ։

ճ Ծն. ա. 27։ մ Ծն. գ. 6, 7։

## ԳԼ. Ը

1 Թագաւորները մեծապէս պատուելու է ։ 6 Պէտք է գիտնալ Աստուծոյ նախախնամութիւնը ։ 12 Աւելի աղէկ է բարեպաշտ մարդոց հետ չքաւորութեան մէջ ըլլալ, քան թէ չարերուն հետ յաջողութեան մէջ ։ 16 Աստուծոյ գործը անքննելի է ։

1 Իմաստունին պէս ո՞վ կայ . ու խօսքի մեկնութիւնը ո՞վ գիտէ . ա մարդուն իմաստութիւնը՝ անոր երեսը կը փայլեցընէ . ու բ երեսին պնդութիւնը կը փոխուի ։

ա Առակ. դ. 8, 9։ ժէ. 24։ Տես Գործ. զ. 15։ բ Բ Օր. իը. 50։

2 Ես կ'ըսեմ որ, Թագաւորին հրամանը պահէ՛, գ մանաւանդ Աստուծոյ երդումին պատճառովը ։

գ Եզեկ. ժէ. 18։ Տես Ա Մն. իթ. 24։ Հռով. ժգ. 5։

3 դ Անոր առջևէն ելլելու մի՛ արտորար . չար գործքի մէջ մի՛ կենար . վասն զի անիկայ ինչ որ ուզէ՝ կ'ընէ ։

դ Գլ. ժ. 4։

4 Ուր որ թագաւորին խօսքը կայ, հոն իշխանութիւն կայ, ու ե ո՞վ կրնայ անոր ըսել թէ, Ի՞նչ կ'ընես ։

ե Յոբ. լդ. 18։

5 Պատուիրանքը պահողը չարիքի չհանդիպիր . և իմաստունին սիրտը ժամանակը ու յարմարութիւնը կը ճանչնայ ։

6 Վասն զի զ ամէն դիտաւորութիւն իր ժամանակը ու յարմարութիւնը ունի . քանզի մարդուն վրայ շատ նեղութիւն կու գայ ։

զ Գլ. գ. 1։

7 է Վասն զի անիկայ ըլլալու բանը չգիտեր . և ո՞վ պիտի յայտնէ անոր թէ՝ ինչպէս պիտի ըլլայ ։

է Առակ. իդ. 22։ Գլ. զ. 12։ թ. 12։ ժ. 14։

8 ը Հոգիին վրայ իշխող մարդ չըկայ, որ հոգին արգիլէ, ու մահուան օրուանը վրայ տիրող չկայ . և ան պատերազմին մէջ * արձակում չկայ . ու ամբարշտութիւնը՝ իրեն հետևողները չազատեր ։

ը Յոբ. ժդ. 5։ Սաղ. խթ. 6, 7։

* Կամ՝ զինադադարում

9 Ասոնց ամէնը տեսայ, ու արևուն տակը եղող ամէն գործքին՝ իմ սիրտս տուի ։ Ատեն կայ որ՝ մէկ մարդ մը ուրիշ մարդու վրայ կ'իշխէ իրեն թշուառութեանը համար ։

10 Եւ ասոր հետ տեսայ ամբարիշտները որ թաղուեցան դացին, ու սուրբ տեղէն ելան . և մոռցուեցան ան քաղաքին մէջը՝ ուր որ ասանկ ըրին . աս ալ ունայնութիւն է ։

11 թ Որովհետև գէշ գործքին վրայ՝ վճիռը շուտով չկատարուիր, աս պատճառաւ մարդոց որդիներուն

թ Սաղ. ժ. 6։ ծ. 21։ Ես. իզ. 10։

Ն. Ք. ԳՔ. ԻՐՐ 977

սիրտը չարութիւն ընելու փափաքով լեցուած է ։

ժ Եղ. կե. 20 ; Հռով. բ. 5 ;
ի Սաղ. լէ. 11, 18, 19 ; Առակ. ա. 32, 33 ; Եսա. գ. 10, 11 ; Մատ. իե. 34, 41 ;

12 ժ Թէև մեղաւորը հարիւր անգամ չարութիւն ընէ, ու անոր կեանքը երկընցնայ ալ, այսու ամենայնիւ ստոյգ գիտեմ որ ի բարութիւնը՝ Աստուծմէ վախցողներուն, անոր երեսէն վախցողներուն պիտի ըլլայ ։

13 Բայց ամբարշտին բարութիւն պիտի չըլլայ. ու անիկայ իր օրերը պիտի չերկընցընէ, հովա ստուերի պէս պիտի ըլլայ. վասն զի Աստուծոյ երեսէն չվախնար ։

լ Սաղ. հգ. 14 ; Գլ. ը. 14 ; է. 15 ; Թ. 1, 2, 3 ;
խ Գլ. բ. 24 ; գ. 12, 22 ; ե. 18 ; Թ. 7 ;

14 Ունայնութիւն մը կայ, որ աշխարհիս վրայ կ'ըլլայ. այսինքն արդարներ կան, որոնց լ ամբարիշտներուն գործքին պէս կը պատահի. ու ամբարիշտներ ալ կան, որոնց՝ արդարներուն գործքին պէս կը պատահի. խ Ըսի որ՝ Աս ալ ունայնութիւն է ։

15 Ու ես ուրախութիւնը գովեցի, վասն զի մարդը արեւուն տակը՝ ուտելէն, խմելէն, և ուրախութիւն ընելէն ՚ի զատ՝ աղէկ բան մը չունի. վասն զի արեւուն տակը Աստուծոյ անոր տուած կենացը օրերուն մէջ՝ իր աշխատանքէն ասիկայ կը մնայ անոր ։

16 Երբոր ես իմ սիրտս տուի իմաստութիւնը գիտնալու, ու երկրի վրայ եղած զբաղմունքը տեսնելու, (վասն զի թէ՛ ցորեկ և թէ՛ գիշեր իր աչքը քուն չտեսնող մարդ կայ,)

ծ Յոբ. ե. 9 ; Գլ. գ. 11 ; Հռովմ. ժա. 33 ;
կ Սաղ. հգ. 16 ;

17 Ան ատենը Աստուծոյ բոլոր գործքերէն հասկըցայ, որ ծ մարդ չկրնար գտնել ան գործը՝ որ արեւուն տակը կ'ըլլայ. վասն զի մարդը կ'աշխատի փնտռելու, բայց չգտներ, ու թէև իմաստունն ալ Գիտնամ ըսէ, կ գտնելու կարող չըլլար ։

## ԳԼ. Թ

1 Մի և նոյն բաները կը պատահին բարիներուն ու չարերուն ։ 4 Մարդս անպատճառ պիտի մեռնի. 7 անոր բաժինը աս կեանքիս մէջ հանգիստ ապրիլն է ։ 11 Աստուծոյ նախախնամութիւնը ամէն բան կը կառավարէ ։ 13 Իմաստութիւնը ուժէն աղէկ է ։

հ Գլ. ը. 14 ;

1 Վասն զի աս ամէնը իմ սրտիս մէջը դրի, որ աս ամէնը քննեմ. հ որ արդարները և իմաստունները ու անոնց գործքերը՝ Աստուծոյ ձեռքին մէջն են. մարդ չգիտեր թէ՛ սէրը և թէ՛ ատելութիւնը. ամէն բան անոնց առջեւն է ։

ձ Յոբ. իա. 7, ՃԸ ; Սաղ. հգ. 3, 12, 13 ; Մաղ. գ. 15.

2 ձ Ամէն բան՝ ամենուն հաւասարապէս կը պատահի. արդարին ու ամբարշտին. բարի մարդուն մաքուրին ու անմաքուրին, զոհ ընողին, ու զոհ չընողին պատահած դիպուածը մէկ է. ինչպէս է բարի մարդը, մեղաւորն ալ այնպէս է. երդում ընողը՝ երդումէն վախցողին պէս է ։

3 Արեւուն տակը եղած բոլոր գործքերուն մէջ գէշ բանը աս է, որ ամենուն պատահած դիպուածը մէկ է. ու նաև մարդոց որդիներուն սիրտը չարութեամբ լեցուած ըլլալով՝ իրենց կենդանութեան ատենը՝ իրենց սրտին մէջը խենթութիւն կայ. ու ետքը մեռելներուն կ'էջնեն ։

4 Քանզի բոլոր կենդանիներուն ընկերացած մարդէն յոյս կայ. վասն զի ողջ շունը՝ մեռած առիւծէն աղէկ է ։

ղ Յոբ. ժդ. 21 ;
* Կամ՝ չահ
ճ Յոբ. է. 8, 9, 10 ; Եսա. իզ. 14 ;

5 Որովհետեւ կենդանիները գիտեն որ պիտի մեռնին. բայց ղ մեռելները բան մը չեն գիտեր, ու * վարձք մը չեն առներ. վասն զի ճ անոնց յիշատակը մոռցուեցաւ ։

6 Թէ՛ անոնց սէրը, թէ՛ ատելութիւնը, և թէ՛ նախանձը արդէն կորսուեցաւ. ու անոնք՝ արեւուն տակը եղող բաներուն մէջ յաւիտեան բաժին մը չունին ։

մ Գլ. ը. 15 ;

7 Գնա մ հացդ ուրախութեամբ կեր, ու գինիդ ուրախ սրտով խմէ՛. վասն զի արդէն Աստուած քու գործքերուդ հաւնեցաւ ։

8 Հանդերձներդ ամէն ատեն ճերմակ ըլլան, ու գլխուդ վրայէն եղը պակաս չըլլայ ։

յ Գլ. բ. 10, 24 ; գ. 13, 22 ; ե. 18 ;

9 Քու սիրած կնկանդ հետ կեանք վայելէ քու ունայնութեան կենացդ բոլոր օրերուն մէջ, որ Աստուած քեզի տուաւ արեւուն տակը քու ունայնութեանդ բոլոր օրերուն մէջ. յ վասն զի աս կեանքիս մէջ քու բաժինդ անիկայ է, արեւուն տակը քաշած աշխատանքիդ ։

10 Ձեռքդ ինչ որ գտնէ ընելու, բոլոր ուժովդ ըրէ. քանզի ան քու երթալու գերեզմանիդ մէջը՝ գործք, խորհուրդ, գիտութիւն ու իմաստութիւն չկայ ։

ն Ամով. բ. 14, 15 ; Երեմ. թ. 23 ;

11 Դարձայ ն ու արեւուն տակը տեսայ, որ ճամբան վազողներուն չէ, ու պատերազմը զօրաւորներուն չէ. ու նաև հացը իմաստուններուն չէ, և հարստութիւնն ալ հանճարեղներուն չէ. ու նաև շնորհքը գիտուններուն չէ. հապա ժամանակ ու դիպուած կը պատահի ամենուն ։

շ Գլ. ը. 7 ;
ո Առակ. իթ. 6 ; Ղուկ. ժբ. 20, 39 ; ժէ. 26, ՃԷ ; Ա Թես. ե. 3 ;

12 Վասն զի շ մարդ իր ատենը անգամ չգիտեր. ինչպէս որ ձուկերը չար ուռկանով կը բռնուին, եւ թռչունները ծուղակի մէջ կը բռնուին. նոյնպէս մարդոց որդիներն ալ ո որոգայթի մէջ կ'իյնան, երբոր չար ժամանակը յանկարծ անոնց վրայ կու գայ ։

Ն. ք. գ. Ի. եր 977

ժ Տես. բ Թագ. ի. 16—22։

ի Առակ. իա. 22։ իդ. 5։ Գլ. է. 19։ Հմր 18։

ւ Մար. զ. 2, 8։

ի Հմր 16։

ծ Յես. է. 1, 11, 12։

13 Արևուն տակը աս իմաստութիւնն ալ տեսայ, ու անիկայ ինծի մեծ երևցաւ.

14 ժ Մէկ պզտիկ քաղաք մը՝ ու մէջն ալ քիչ մարդ կար. և անոր վրայ մէկ մեծ թագաւոր մը եկաւ, ու զանիկայ պաշարեց, և անոր դէմ մեծ պատնէշներ շինեց.

15 Ու անոր մէջը մէկ աղքատ իմաստուն մը գտնուեցաւ. և անիկայ իր իմաստութեամբը քաղաքը ազատեց. բայց աս աղքատ մարդը բնաւ յիշող մը չեղաւ։

16 ի Ան ատենը ըսի թէ՝ իմաստութիւնը ուժէն աղէկ է, թէև աղքատին իմաստութիւնը կ'անարգեն, ու անոր խօսքերը մտիկ չեն ըներ։

17 Իմաստուններուն մեղմ խօսքերը, յիմարներուն մէջ իշխան եղողին աղաղակէն աղէկ կը լսուին։

18 Ի իմաստութիւնը պատերազմական զէնքերէն աղէկ է. բայց ծ մէկ մեղաւորը շատ բարութիւններու կորստեանը պատճառ կ'ըլլայ։

ԳԼ. Ժ

1 Իմաստութեան և յիմարութեան վրայով. 16 զեղխութեան, 18 ծուլութեան, 19 ու ստակի վրայով. 20 և թագաւորներուն վայելուչ պատուոյն վրայով խօսքեր։

* Կամ՝ իմաստութենէն ու պատուէն աւելի երևան կ'ելլէ։

ա Առակ. ժգ. 16։ ժը. 2։

բ Գլ. ը. 3։

գ ա Թագ. իե. 24, 33։ Առակ. իե. 15։

դ Եսթ. գ. 1։

ե Առակ. ժթ. 10։ լ. 22։

զ Սաղ. է. 15։ Առակ. իզ. 27։

1 Մեռած ճանճերը իւղագործին եղը գարշահոտ կ'ընեն. քիչ մը անմտութիւնն ալ * իմաստութեամբ և պատուով երևելի անուանի մարդը այնպէս կ'ընէ"։

2 Իմաստունին սիրտը իր աջ կողմն է, ու անմիտին սիրտը իր ձախ կողմն է։

3 Եւ անմիտ մարդը ճամբան քալելու ատենն ալ, խելքը պակաս ըլլալուն համար՝ ա իր յիմար ըլլալը ամենուն կը յայտնէ։

4 Թէ որ իշխանին բարկութիւնը քեզի դէմ ելլէ, բ քու տեղդ մի՛ ձգեր. վասն զի գ քաղցրութիւնը մեծ յանցանքները կը դադրեցնէ։

5 Արևուն տակը մէկ չարութիւն մըն ալ տեսայ, որ իշխանին երեսէն ելած անխոհեմութիւն մը ըլլալ կ'երևնայ։

6 դ Անմտութիւնը խիստ բարձր տեղերու վրայ կը դրուի. ու հարուստները ցած տեղ մը կը նստին։

7 Տեսայ ծառաներ՝ ե որ ձիերու վրայ հեծեր էին, և իշխաններ՝ որ երկրի վրայ ծառաներու պէս կը քալէին։

8 զ Փոս փորողը ինքը մէջը կ'իյնայ. ու ցանկ քակողը՝ օձը կը խածնէ։

9 Քարեր կտրողը՝ անոնցմէ կը վնասուի, և փայտեր ճեղքողը վտանգի մէջ կ'ըլլայ։

10 Թէ որ երկաթը բթացած է, ու անոր բերանը չսրէ, ան ատենը մարդը իր ոյժը կրկնապատկելու է. բայց իմաստութիւնը յաջողելու օգուտը ունի։

11 † Թէ որ օձը է թովելէն առաջ խածնէ, ան ատենը թովիչին օգուտ մը չմնար"։

12 ը Իմաստունին բերնին խօսքերը շնորհք է. բայց թ անմիտին շրթունքները զինքը կը կլլեն։

13 Անոր բերնին խօսքերուն սկզբնաւորութիւնը անմտութիւն է. ու անոր խօսքին վերջը գէշ խենթութիւն է։

14 ժ Եւ յիմարը իր խօսքերը կը շատցընէ. մարդս ինչ ըլլալիքը չգիտեր. ու ի անոր ով պիտի յայտնէ թէ անկէ ետքը ինչ պիտի ըլլայ։

15 Յիմարներուն աշխատանքը զիրենք կը ձանձրացընէ. քաղաքը երթալը չգիտցողին պէս։

16 լ Վա՜յ քեզի երկիր՝ երբոր քու թագաւորդ տղայ է, ու իշխաններդ առտուանց կերակուր կ'ուտեն։

17 Երանի քեզի երկիր՝ երբոր քու թագաւորդ ազնուազարմ է. և ի քու իշխաններդ ատենով կ'ուտեն, ուժի համար, և ոչ թէ գինովութեան համար։

18 Շատ ծուլութիւնով շէնքը կը փլչի, և ձեռաց թուլութիւնով տունը կը կաթի։

19 Կոչունքը՝ ծիծաղելու համար կ'ընեն, ու ծ գինին կեանքը կ'ուրախացընէ. իսկ արծաթը ամէն բանի բաւական կ'ըլլայ։

20 Միտքիդ մէջը անգամ կ թագաւորին անէծք մի՛ տար, և քու պառկելու սենեակներուդ մէջ՝ մեծերուն անէծք մի՛ տար. վասն զի երկինքի թռչունը ան ձայնը կը տանի, ու թևաւորը խօսքը կը պատմէ։

ԳԼ. ԺԱ

1 Ողորմած ըլլալու պատուէրներ։ 7 Կենաց մէջ մահը, 9 ու մանկութեան ատենը դատաստանի օրը միտք բերելու է։

1 Քու հացդ ա ջուրերու երեսին վրայ ձգէ. բ վասն զի շատ օրերէն ետքը զանիկայ պիտի գտնես։

2 գ Եօթնին ու ութին ալ դ բաժին տուր. ե վասն զի չես գիտեր թէ երկրիս վրայ ինչ պատուհաս պիտի ըլլայ։

3 Թէ որ ամպերը լեցուն ըլլան, երկրիս վրայ անձրև կը թափեն. ու երբոր ծառ մը դէպ 'ի հարաւ կամ դէպ 'ի հիւսիս իյնայ, ան ծառը ինկած տեղը կը մնայ։

4 Հովը դիտողը չկրնար ցանել, և ամպերուն նայողը չկրնար հնձել։

5 Ինչպէս որ չ գիտեն † հոգիին ճամ-

Ն. ք. գ. Ի. եր 977

† Կամ՝ Օձը որ, առանց ձայնհանելու կը խածնէ, բանսարկու մարդը անկէ աւրբերութիւն մը չունի։

է Սաղ. ծը. 4, 5։ Երեմ. ը. 17։

ը Առակ. ժ. 32։ ժը. 13։

թ Առակ. ժ. 14։ ժը. 7։

ժ Առակ. ժե. 2։

ի Գլ. գ. 22։ զ. 12։ ը. 7։

լ Ես. գ. 4, 5, 12։ ե. 11։

ի Առակ. լա. 4։

ծ Սաղ. ճդ. 15։

կ Ել. իբ. 28։ Գործ. իգ. 5։

ա Տես Ես. լբ. 20։

բ Օր. ժե. 10։ Առակ. ժթ. 17։ Մատ. ժ. 42։ բ Կոր. թ. 8։ Գաղ. զ. 9, 10։ Եբր. զ. 10։

գ Միք. ե. 5։

դ Սաղ. ճժբ. 9։ Ղուկ. զ. 30։ ա Տիմ. զ. 18, 19։

ե Եփե. ե. 16։

չ Յոհ. գ. 8։

† Կամ՝ Հովին

Ն. Ք. Գ.Ք. Իեր 977

Ե Սաղ. ճլթ. 14, 15։

բան որը ըլլալը, կղերն որովայնին մէջ ոսկորներուն ինչպէս կազմուիլը չես գիտեր, այնպէս ալ ամենաստեղծ Աստուծոյն գործը չես գիտեր։

6 Առտուանց քու սերմդ ցանէ, և իրիկունը քու ձեռքդ պարապ մի՛ թողուր. վասն զի չես գիտեր թէ որը օգտակար պիտի ըլլայ, աս՝ թէ ան. կամ թէ երկուքը հաւասարապէս աղէկ պիտի ըլլան։

Ը Գլ. Է. 11։

7 Իրաւ որ լոյսը քաղցր է, ու Ըարևը տեսնելը աչքերու ախորժելի է.

8 Բայց թէև մարդ մը շատ տարի ապրի, ու անոնց ամենուն մէջը ուրախանայ, խաւարի օրերն ալ յիշելու է. վասն զի անոնք շատ պիտի ըլլան. բոլոր գալիքը ունայնութիւն է։

Ի Թուո. Ժե. 39։

9 Ո՛վ երիտասարդ՝ քու մանկութեանդ մէջ ուրախ եղիր. ու երիտասարդութեանդ օրերուն մէջ՝ սիրտդ թող քեզ զուարճացընէ, Ի և քու սրտիդ ճամբաներովը, ու աչքերուդ նայուածքովը քալէ. բայց գիտցիր որ ասոնց ամենուն համար Ժ Աստուած քեզ դատաստանի պիտի բերէ։

Ժ Գլ. ԺԲ. 14։ Հռով. Բ. 6-11։

Ի Բ Կոր. Է. 1։ Բ Տիմ. Բ. 22։ Լ Սաղ. ԼԹ. 5։

10 Ու քու սրտէդ տրտմութիւնը վերցուր, ու Ի մարմինէդ չարութիւնը հեռացուր. Լ վասն զի մանկութիւնը ու երիտասարդութիւնը ունայնութիւն է։

## ԳԼ. ԺԲ

1 Ստեղծիչը կանուխկէկ յիշելու վրայով պատուէր։ 8 Ժողովողին հոգը՝ սորվեցընելու համար։ 13 Աստուծոյ երկիւղը ունայնութեան դէմ ազդու դեղթափ մըն է։

Ա Առակ. Իբ. 6։ Տես Ողբ. Գ. 27։

Բ Տես Բ Թագ. ԺԹ. 35։

1 Ու Ա քու Ստեղծիչդ երիտասարդութեանդ օրերուն մէջ յիշէ դեռ թշուառութեան օրերը չեկած, ու ան տարիները չհասած, Բ որոնց մէջ պիտի ըսես թէ՝ Անոնց չեմ հաւնիր.

2 Արևը, լոյսը, լուսինը ու աստղերը չխաւարած, ու անձրևին ետևէն ամպերը չդարձած.

3 Ան օրը՝ որ տանը պահապանները պիտի դողան, ու զօրաւոր մարդիկները պիտի ծռին, և աղացողները՝ քիչ մնալնուն համար, պիտի դադարին, ու պատուհաններէն նայողները պիտի մթըննան.

Ն. Ք. Գ.Ք. Իեր 977

4 Ու երբոր աղօրիքին ձայնը տկարանայ. փողոցներուն մէջ դռները պիտի գոցուին. և թռչունի ձայնով պիտի ելլեն. ու բոլոր Գ երգեցող աղջիկները նկուն պիտի ըլլան.

Գ Բ Թագ. ԺԹ. 35։

5 Ու բարձրէն պիտի վախնան, ու ճամբուն մէջ վախկոտ պիտի ըլլան. և նշենին պիտի ծաղկի, ու մարախը ծանրութիւն պիտի սեպուի. և *ախորժակը պիտի դադրի. վասն զի մարդ Դ իր յաւիտենական տունը կ'երթայ, ու Ե լացողները փողոցներուն մէջ պիտի շրջին.

* Կամ՝ կապպարը պիտի ծակուի

Դ Յոբ. ԺԷ. 13։

Ե Երեմ. Թ. 17։

6 Դեռ արծաթէ թելը չփրթած, ու ոսկիէ բաժակը չկոտրած, և սափորը աղբիւրին քովը չփշրած, ու ջրհորին վրայի անիւը չկոտրած.

7 Զ Ան ատենը հողը երկիրը պիտի դառնայ՝ առջի եղածին պէս. Է Ու հոգին Աստուծոյ պիտի դառնայ, Ը որ զանիկայ տուաւ։

Զ Ծն. Գ. 19։ Յոբ. ԼԴ. 15։ Սաղ. Ղ. 3։

Է Գլ. Գ. 21։

Ը Թուո. ԺԶ. 22։ ԻԷ. 16։ Յոբ. ԼԴ. 14։ Եսա. ԾԷ. 16։ Զաք. ԺԲ. 1։

8 Թ Ունայնութիւն ունայնութեանց, ըսաւ Ժողովողը՝ ամէն բան ունայնութիւն է։

Թ Սաղ. ԿԲ. 9։ Գլ. Ա. 2։

9 Ու որչափ որ Ժողովողը իմաստուն էր, ժողովուրդին ալ գիտութիւն սորվեցուց. և †խորհելով ու քննելով՝ Ժ շատ առակներ շարադրեց։

† Կամ՝ կշռելով

Ժ Գ Թագ. Դ. 32։

10 Ժողովողը փնտռեց որ ախորժելի խօսքեր գտնէ. ու գրուածը՝ ուղիղ և ճշմարիտ խօսքեր են։

11 Իմաստուններուն խօսքերը խթաններու պէս են, ու ժողովներու տէրերէն գամուած բևեռներու պէս՝ մէկ հովիւէ տրուած.

12 Վերջապէս որդեակ իմ՝ անոնցմէ խրատ առ. շատ գիրք շինելը ծայր չունի. ու Ի շատ կարդալը մարմինը կը յոգնեցընէ։

Ի Գլ. Ա. 18։

13 Ամբողջ խօսքին վախճանը լսենք. Լ Աստուծմէ վախցիր, ու անոր պատուիրանքները պահէ. վասն զի մարդուս բոլոր պարտաւորութիւնը ասիկայ է։

Լ Բ Օր. Զ. 2։ Ժ. 12։

14 Քանզի Ի Աստուած ամէն գործքը՝ ամէն ծածուկ բաներու հետ՝ թէ բարին և թէ չարը՝ դատաստանի պիտի բերէ։

Ի Գլ. ԺԱ. 9։ Մատ. ԺԲ. 36։ Գոր. ԺԷ. 30, 31։ Հռով. Բ. 16։ ԺԴ. 10, 12։ Ա Կոր. Դ. 5։ Բ Կոր. Ե. 10։

# ԵՐԳ ԵՐԳՈՑ

## ԳԼՈՒԽ Ա

1 Եկեղեցին Քրիստոսի վրայ իր ունեցած սէրը կը ցուցնէ · 5 կը խոստովանի իր տգեղութիւնը, 7 ու կ'աղաչէ որ անոր հօտին առաջնորդուի ։ 8 Քրիստոս հովիւներուն վրանները կը խրկէ զանիկայ, 9 ու իր սէրը անոր ցուցնելով՝ 11 հաճոյական խոստումունքներ կ'ընէ անոր ։ 12 Եկեղեցին ու Քրիստոս իրարու կը յայտնեն իրենց խնդակցութիւնը ։

Ն · Ք · Գ Ճ · Իրր 1014

1 ᵃԵրգ երգոց Սողոմոնի ։
2 Իր բերանին համբոյրներովը թող համբուրէ զիս. ᵇվասն զի
քու սէրդ գինիէն աղէկ է ։
3 Քու եղերուդ հոտը անուշ է. քու անունդ թափուած եղի
պէս է. անոր համար օրիորդները
քեզ կը սիրեն ։
4 ᶜԶիս քաշէ. ᵈքու ետեւէդ պիտի
վազենք. թագաւորը ᵉիր սենեակները տարաւ զիս. քեզի հետ ցնծանք եւ ուրախանանք. քու սէրդ
գինիէն աւելի յիշենք. քեզ *ուղղութեամբ կը սիրեն ։
5 Ո՛վ Երուսաղէմի աղջիկները՝ ես
սեւ եմ՝ բայց գեղեցիկ, Կեդարու
վրաններուն պէս, Սողոմոնին վարագոյրներուն պէս ։
6 Իմ սեւցած ըլլալուս մի՛ նայիք.
վասն զի արեւը զիս տեսաւ, իմ
մօրս որդիքը ինծի սրդողեցան.
զիս այգիներու պահապան ըրին.
բայց իմ այգիիս պահպանութիւն
չըրի ։
7 Պատմէ՛ ինծի, ո՛վ հոգիիս սիրածը, ուր հօտդ ո՞ւր կ'արածես.
կէսօրին ո՞ւր կը պառկեցնես.
քանզի քու ընկերներուդ հօտերուն
քովը ինչո՞ւ †թափառականի պէս
ըլլամ ։
8 Թէ որ դուն չես գիտեր՝ ո՛վ
կիներուն գեղեցիկը, հօտերուն
շաւիղներէն գնա՛, ու հովիւներուն
վրաններուն քովը քու ուլերդ արածէ՛ ։
9 ᶠՓարաւոնի կառքերուն լծուած
ձիերուս նմանցուցի քեզ՝ ո՛վ իմ
սիրուհիս ։
10 ᵍՔու այտերդ զարդերով գեղեցիկ է, եւ քու պարանոցդ քառամանեակներով ։
11 Քեզի ոսկեղէն զարդեր պիտի
շինենք արծաթէ կիտուածներով ։
12 Երբոր թագաւորը սեղանն էր,
իմ նարդոսս իր հոտը բուրեց ։
13 ʰԻմ սիրականս՝ ինծի ստաշխի ծըրարին պէս է. գիշերը իմ ստինքներուս մէջը պիտի հանգչի ։
14 Իմ սիրականս ⁱհինայի ողկոյզին
պէս է ինծի՝ Ենգադդիի այգիներուն մէջ ։
15 ʲԱհա՛ գեղեցիկ ես՝ ո՛վ իմ սիրուհիս. ահա՛ գեղեցիկ ես. քու աչքերդ՝ աղաւնիներու աչքերուն կը
նմանին ։
16 Ո՛վ իմ սիրականս՝ ահա՛ գեղեցիկ
ես ու վայելուչ. եւ մեր անկողինը
կանանչ է ։
17 Մեր տուներուն գերանները եղեւնափայտ են, ու մեր առիքները
մայր փայտէ են ։

## ԳԼ · Բ

1 Քրիստոսին ու իր եկեղեցիին փոխադարձ սէրը ։ 8 Եկեղեցիին յոյսը, 10 ու կոչումը ։ 14 Քրիստոսին խնամքը իր եկեղեցիին վրայ ։ 16 Եկեղեցիին խոստովանութիւնը, անոր հաւատքը ու յոյսը ։

1 Ես Սարոնին ծաղիկն եմ, ու հովիտներուն շուշանը ։
2 Ինչպէս շուշանը փուշերուն մէջ՝
անանկ է իմ սիրուհիս աղջիկներուն
մէջ ։
3 Ինչպէս խնձորենին անտառի ծառերուն մէջ՝ անանկ է իմ սիրականս
երիտասարդաց մէջ. անոր հովանիին տակը ախորժելով նստայ,
ᵏու անոր պտուղը իմ քիմացս քաղցըր է ։
4 Զիս ‡խնճոյքին տունը բերաւ,
եւ անոր դրօշը իմ վրաս սէր էր ։
5 Զիս կարկանդակներով զօրացուցէք. զիս խնձորներով ուժովցուցէք. վասն զի ես սիրով կը
նուաղիմ ։
6 ˡԱնոր ձախ ձեռքը իմ գլխուս
տակը ըլլայ, ու աջ ձեռքը զիս
գրկէ ։
7 ᵐՈ՛վ Երուսաղէմի աղջիկները՝
ձեզ այծեամներով, կամ դաշտի
եղնիկներով կ'երդմնցընեմ, որ սիրուհին չվերցընէք, ու չարթընցընէք, մինչեւ որ ինքը չուզէ ։
8 Իմ սիրականիս ձայնն է. ահա՛
անիկայ լեռներուն վրայէն ցատկե-

ᵃ Գ Թագ. Դ. 32 ։
ᵇ Գլ. Դ. 10 ։
ᶜ Ովս. ԺԱ. 4 ։ Յովհ. Զ. 44 ։ ԺԲ. 32 ։
ᵈ Փիլ. Գ. 12, 13, 14 ։
ᵉ Սաղ. ԽԵ. 14, 15 ։ Յովհ. ԺԴ. 2 ։ Եփես. Բ. 6 ։
* Կամ՝ ուղիղները
† Կամ՝ նուաղածի
ᶠ Գլ. Ե. 9 ։ Զ. 1 ։
ᶠ Բ Մն. Ա. 16, 17 ։
ᵍ Գլ. Բ. 2, 10, 13 ։ Դ. 1, 7 ։ Ե. 2 ։ Զ. 4 ։ Յովհ. ԺԵ. 14, 15 ։
ʰ Եզեկ. ԺԶ. 11, 12, 13 ։
ⁱ Գլ. Դ. 13 ։
ʲ Գլ. Դ. 1 ։ Ե. 12 ։
ᵏ Յայտ. Իբ. 1, 2 ։
‡ Եբր. գինիին
ˡ Գլ. Ը. 3 ։
ᵐ Գլ. Գ. 5 ։ Ը. 4 ։

Ն. Ք. ԳՔ. ԻՐՐ 1014

՝լով՝ ու բլուրներուն վրայէն ցատ-
կըտելով կու գայ ։
ՏՀմր 17 ։ 9 Տ Իմ սիրականս այծեման կամ
եղնիկի ձագի կը նմանի . ահա հի-
մա մեր պատին ետեւը կայներ է .
պատուհաններէն կը նայի . վան-
դակներէն կ'երեւնայ ։
10 Իմ սիրականս պատասխան տա-
Ի Հմր 13 ։ լով՝ ինծի ըսաւ . Ի Ելի՛ր ո՛վ սիրու-
հիս , ո՛վ գեղեցիկս , ու եկո՛ւր .
11 Քանզի ահա ձմեռը անցաւ ,
անձրեւները անցան գացին .
12 Գետնի վրայ ծաղիկներ կ'երեւ-
նան , յօտելու ժամանակը հասաւ ,
ու մեր երկրին վրայ տատրակին
ձայնը կը լսուի ։
13 Ահա թզենին իր թուզերը կը
հասցընէ . ու որթերը ծաղկեցան ,
Ղ Հմր 10 ։ և իրենց հոտը կու տան . Ղ Ելի՛ր ո՛վ
սիրուհիս , ո՛վ գեղեցիկս , ու ե-
կո՛ւր ։
14 Ո՛վ իմ աղաւնիս՝ վէմին խոռոչ-
ներուն մէջը , ապառաժին հովա-
նիին տակը Ի[illegible] . ինծի երեսդ
Ի Գւ. Ը. 13։ ցուցո՛ւր . Ի ձայնդ ինծի լսել տուր .
քանզի ձայնդ քաղցր , ու դէմքդ
գեղեցիկ է ։
Ը Սաղ. Ձ. 13։ Եզեկ. ԺԳ. 4 ։ Ղու. ԺԳ. 32 ։ 15 Բռնեցէ՛ք մեզի Ըաղուէսները , այ-
գիները աւրող պզտիկ աղուէսնե-
րը . վասն զի մեր այգիները ծաղ-
կեր են ։
Ռ Գւ. Զ. 8 ։ Է. 10 ։ 16 Ռ Իմ սիրականս իմս է , ու ես ա-
նորն եմ . անիկայ [illegible] շուշան-
ներու մէջ կ'արածէ ։
Ժ Գւ. Դ. 6 ։ 17 Ժ Օրուան հովը չփչած , ու ըս-
տուերները չհեռացած , դարձի՛ր
ո՛վ իմ սիրականս . [illegible] Բեթերի
Ի Հմր 9 ։ Գւ. Ը. 14 ։ լեռներուն վրայի Ի այծեման [illegible]
կամ եղնիկներու ձագին պէս եղի՛ր ։

## ԳԼ. Գ

1 Եկեղեցիին պատերազմը , ու յաղթութիւնը փորձութեան մէջ ։ 6 Եկեղեցին Քրիստոսով կը պարծի ։

[illegible] Եւ. Իզ. 9 ։ 1 [illegible] Իմ հոգւոյս սիրածը գիշերը ան-
կողինիս մէջը փնտռեցի . զա-
նիկայ փնտռեցի , բայց չգտայ ։
2 Ելլեմ հիմա պտըտիմ քաղաքին
մէջը , փողոցներուն ու հրապա-
րակներուն մէջը . իմ հոգիիս սի-
րածը փնտռեմ ։ Զանիկայ փընտ-
ռեցի , բայց չգտայ ։
Բ Գւ. Ե. 7 ։ 3 Բ Քաղաքին մէջ պտըտող պա-
հապանները զիս գտան . Արդեօք
իմ հոգիիս սիրածը տեսա՞ք՝ [illegible] ։
4 Անոնցմէ քիչ մը առաջ անցնե-
լով՝ իմ հոգիիս սիրածը գտայ .
զանիկայ բռնեցի , ու չթողուցի ,
մինչեւ որ իմ մօրս տունը՝ ու զիս
ծնանողին սենեակը տարի ։
Գ Գւ. Բ. 7 ։ Ը. 4 ։ 5 Գ Ո՛վ Երուսաղեմի աղջիկները՝
ձեզ այծեամներով , կամ դաշտին
եղնիկներովը կ'երդմնցընեմ , որ սի-
րուհին չվերցընէք , ու չարթընցը-
նէք , մինչեւ որ ինքը չուզէ ։ Ն. Ք. ԳՔ. ԻՐՐ 1014
6 Տ Ո՛վ է ասիկայ՝ որ զմուռսով և Տ Գւ. Ը. 5 ։
կնդրուկով , [illegible] փերեզակներուն
ամէն [illegible] փոշիովը խնկուած՝ ա-
նապատէն կ'ելլէ ծուխի սիւներու
պէս ։
7 Ահա Սողոմոնին * գահոյքը , ո- * Կամ՝ անկողինը ։
րուն բոլորտիքը՝ Իսրայէլի զօ-
րաւորներէն վաթսուն զօրաւոր
կայ .
8 Ամէնքն ալ սուսերաւոր են , [illegible]
պատերազմի վարժուած են . գիշե-
րուան վախին համար՝ ամէն մէ-
կուն սուրը իր ազդրին վրայ է ։
9 Սողոմոն թագաւորը Լիբանանի
ծառերէն մէկ գահաւորակ մը շինեց
իրեն համար .
10 Սիւները արծաթէ , յենարաննե-
րը ոսկիէ , բազմոցը ծիրանիէ շի-
նեց . ու մէջը՝ Երուսաղեմի աղջիկ-
ներէն † խիստ գեղեցիկ" նկարա- † Եբր. [illegible]րով
գործուած էր ։
11 Ո՛վ Սիոնի աղջիկները՝ ելէ՛ք , և
Սողոմոն թագաւորը տեսէ՛ք ան
թագովը , որով իր մայրը՝ իր փե-
սայութեան օրը , ու սրտին ուրա-
խութեան օրը՝ պսակեց զանիկայ ։

## ԳԼ. Դ

1 Քրիստոս կը հրատարակէ եկեղեցիին շնորհքները . 8 անոր վրայ իր ունեցած սէրը կը յայտնէ ։ 16 Եկեղեցին կը խնդրէ որ անոր ներկայութեանը համար պատրաստութիւն ունենայ ։

1 Ահա [illegible]դուն գեղեցիկ ես՝ ո՛վ իմ [illegible] Գւ. Ա. 15 ։ Ե. 12 .
սիրուհիս , ահա դուն գեղեցիկ
ես . լաչակիդ մէջէն՝ քու աչքերդ
աղաւնիներու [illegible] կը նմանին .
քու մազերդ Գաղաադ ‡ լեռը ‡ Կամ՝ լեռնէն երեւցած
պառկող" Բ այծերուն հօտին պէս
է ։ Բ Գւ. Զ. 5 ։
2 Գ Ակռաներդ լուացարանէն ելլող Գ Գւ. Զ. 6 ։
խուզած հօտի պէս է , որոնց ամէ-
նը երկուորեակ կը ծնանին , ու ա-
նոնց մէջը ամուլ չկայ ։
3 Քու շրթունքներդ՝ կարմիր դեր-
ձանի պէս է , ու խօսուածքդ գե-
ղեցիկ է . Տ այտերդ լաչակիդ մէ- Տ Գւ. Զ. 7 ։
ջէն՝ նուռի կտորներու կը նմանին .
4 Ի Քու պարանոցդ՝ Ղ զինարանի Ի Գւ. Է. 4 ։
համար շինուած Դաւիթի աշտա- Ղ Նեեմ. Գ. 19 ։
րակին պէս է . որ հոն հազար աս-
պար կախուած են . ամէնն ալ զօ-
րաւորներուն վահաններն են ։
5 Ի Քու երկու ստինքդ նման է եր- Ի Գւ. Է. 3 ։
կու ուլերու , որ այծեամի մը եր- Տն. Առակ. Ե. 19 ։
կուորեակ ծնած են և շուշաններու
մէջ կ'արածուին ։
6 Ը Օրուան հովը չփչած , ու ըս- Ը Գւ. Բ. 17 ։
տուերները չհեռացած , ես զմուռ-
սի լեռը՝ ու կնդրուկի բլուրը պի-
տի երթամ ։

Ն. Ք. Ծ. Տր 1014

ը Եփե. ե. 27։

7 ը Բոլորովին գեղեցիկ ես՝ ով իմ սիրուհիս, և քու վրադ արատ չըկայ։

թ Բ Օր. գ. 9։

8 Ո՛վ հարսն՝ ինծի հետ Լիբանանէն եկո՛ւր, ինծի հետ Լիբանանէն եկուր. Ամանայի գագաթէն՝ Սանիրին ու թ Հերմոնին գագաթէն, առիւծներուն մորիներէն, ու ինձերուն լեռներէն նայէ։

9 Սիրտս առիր, ով իմ հարս քոյրս. սիրտս առիր քու մէկ աչքովդ, և պարանոցիդ մէկ քառամանեակովը։

ժ Գլ. ա. 2։

10 Քու սէրդ ի՜նչ գեղեցիկ է, ով հարս քոյրս. ժ քու սէրդ գինիէն աղէկ է, ու քու եղերուդ անուշահոտութիւնը՝ ամէն խունկերէն։

ի Առակ. իդ. 13, 14։ Գլ. ե. 1։

լ Ծն. իէ. 27։ Ովս. ժդ. 6, 7։

11 Շրթունքներէդ խորիսխի մեղր կը կաթի՛ ով հարսն. ի լեզուիդ տակը մեղր ու կաթ կայ. և քու զգեստներուդ անուշահոտութիւնը լ Լիբանանի հոտին պէս է։

12 Իմ հարս քոյրս փակեալ պարտէզ մըն է, փակեալ աղբիւր ու կնքուած աղբերակ մըն է։

խ Գլ. ա. 14։

13 Քու տունկերդ քաղցրահամ պտուղներով՝ խ հինաներով ու նարդոսներով՝ նռնենեաց դրախտ է.

14 Նարդոս և քրքում, եղէգն և կինամոն, ամէն կնդրուկի ծառով, զմուռսով ու հալուէով, և բոլոր գլխաւոր խունկերով.

ծ Յով. դ. 10։ է. 38։

15 Պարտէզներու աղբիւր, ծ կենդանի ջուրի ջրհոր, ու Լիբանանէն վազած հեղեղներ։

կ Գլ. ե. 1։

16 Արթնցի՛ր ով հիւսիս, եկո՛ւր ով հարաւ. իմ պարտէզիս մէջը փչէ, որ անոր խունկերը բուրեն. կ Իմ սիրականս թող իր պարտէզը գայ, ու իրեն ախորժելի եղած պտուղները ուտէ։

## ԳԼ. Ե

1 Քրիստոս իր կանչելովը եկեղեցին կ'արթընցընէ։ 2 Եկեղեցին Քրիստոսի սիրոյն համը առնելով կը նուաղի։ 9 Քրիստոսի շնորհքներուն ստորագրութիւնը։

ա Գլ. դ. 16։

բ Գլ. դ. 11։

գ Ղու. ժե. 7, 10։ Յով. դ. 29։ Ժե. 14։

1 ա Իմ պարտէզս եկայ՝ ով հարս քոյրս. իմ զմուռսս խունկերուս հետ ժողվեցի. բ իմ խորիսխս մեղրիս հետ կերայ. իմ գինիս կաթովս խմեցի. կերէ՛ք գ ով բարեկամներ, խմեցէ՛ք ու գինովցէ՛ք ով սիրելիներ։

դ Յայտ. գ. 20։

2 Ես կը քնանամ, բայց իմ սիրտս արթուն է. ահա իմ սիրականիս ձայնն է. դ դուռը կը զարնէ, ու կ'ըսէ. Ո՛վ իմ քոյրս, իմ սիրուհիս, իմ աղաւնիս, իմ կատարեալս, բաց ինծի. քանզի իմ գլուխս ցօղով լեցուեցաւ, ու վարսքերս գիշերուան շաղերով։

3 Իմ պատմուճանս հաներ եմ, զանիկայ ի՞նչպէս հագնիմ. ոտքերս լուացեր եմ, զանոնք ի՞նչպէս աղտեղեմ։

4 Իմ սիրականս իր ձեռքը ծակէն երկընցուց. ու անոր համար իմ աղիքս գալարեցաւ։

5 Ես ելայ որ իմ սիրականիս բանամ. ու ձեռքերէս զմուռս ու իմ մատերէս ընտիր զմուռս կաթեց փականակին բռնելու տեղին վրայ։

ե Գլ. գ. 1։

6 Ես իմ սիրականիս բացի. բայց իմ սիրականս քաշուեր գացեր էր. երբոր անիկայ կը խօսէր, իմ հոգիս նուաղեցաւ. ե զանիկայ փնտռեցի, բայց չգտայ. զանիկայ կանչեցի, բայց ինծի պատասխան չտուաւ

զ Գլ. գ. 3։

7 զ Քաղաքին մէջ պտըտող պահապանները զիս գտան. զարկին վիրաւորեցին զիս. պարսպին պահապանները քօղս վրայէս վերցուցին։

8 Ո՛վ Երուսաղէմի աղջիկները՝ ձեզ կ'երդմնցընեմ. թէ որ իմ սիրականս գտնէք, անոր պատմեցէք որ ես սիրով կը նուաղիմ։

է Գլ. ա. 8։

9 է Ո՛վ կիներուն գեղեցիկը՝ քու սիրականդ ուրիշ սիրականէ ի՞նչ տարբերութիւն ունի. քու սիրականդ ուրիշ սիրականէ ի՞նչ տարբերութիւն ունի, որ մեզ այդպէս կ'երդմնցընես։

10 Իմ սիրականս սպիտակ ու կարմիր է. տասը հազարի մէջ երևելի է։

11 Անոր գլուխը զուտ ոսկի է. վարսքերը ցրուած՝ ու ագռաւի պէս սև են.

ը Գլ. ա. 15։ դ. 1։

12 ը Աչքերը՝ վազող ջուրերուն քովը կաթով լուացուած աղաւնիներու աչքերուն կը նմանին. գամուած գոհարներու պէս են։

13 Անոր այտերը՝ խնկալից տունկերու ածուին, և անուշահոտ ծաղիկներու թաղարներուն պէս են. շրթունքները ընտիր զմուռս կաթող շուշաններ են.

14 Ձեռքերը ոսկի մատնիներ են, Թարսիսի քարերով լեցուած. որովայնը բանուած փղոսկր է, շափիւղաներով ծածկուած։

15 Սրունքները՝ մարմարիոն սիւներ են, ընտիր ոսկի խարիսխներու վրայ հաստատուած. կերպարանքը Լիբանանին պէս՝ եղեւիններուն պէս ընտիր է։

16 Անոր քիմքը քաղցր, ու ինքը բոլորովին ցանկալի է. ահա այսպէս է իմ սիրականս, այսպէս է իմ բարեկամս, ով Երուսաղէմի աղջիկները։

Ն․ Ք․ Գ․ իբր 1014

## ԳԼ․ Զ

1 Եկեղեցին իր հաւատքը Քրիստոսի վրայ ըլլալը կը խոստովանի։ 4 Քրիստոս կը ցուցնէ եկեղեցիին շնորհքները, 10 ու իր սէրը՝ որ ունի անոր վրայ։

ա Գլ․ ա․ 8։

1 Քու սիրականդ ո՞ւր գնաց, ա ո՛վ կիներուն գեղեցիկը. քու սիրականդ ո՞ւր դարձաւ, որ զանիկայ քեզի հետ փնտռենք։

2 Իմ սիրականս իր պարտէզը՝ խնկալից տունկերուն ածուները իջաւ, որ պարտէզներուն մէջ արածէ, ու շուշաններ ժողվէ։

բ Գլ․ բ․ 16, է․ 10։

3 բ Ես իմ սիրականինս եմ, և իմ սիրականս իմս է. անիկայ շուշաններու մէջ կ՚արածէ։

գ Հմր 10։

4 Թերսայի պէս գեղեցիկ ես, ո՛վ իմ սիրուհիս. Երուսաղէմի պէս հաճելի ես. գ դրօշակիր զօրքերու պէս ահարկու ես։

* Կամ՝ Գաղաադէն երևցած

դ Գլ․ դ․ 1։

5 Աչքերդ ինծմէ դարձուր. վասն զի անոնք ինծի յաղթեցին. մազերդ՝ *Գաղաադը պառկող" դ այծերուն հօտին պէս է։

ե Գլ․ դ․ 2։

6 ե Ակռաներդ լուացարանէն ելած մաքիներուն հօտին կը նմանին, որոնց ամէնը երկուորեակ կը ծնանին, ու անոնց մէջը ամուլ չըկայ։

զ Գլ․ դ․ 3։

7 զ Այտերդ լաչակիդ մէջէն՝ նռան կտորներու կը նմանին։

8 Թագուհիները վաթսուն՝ ու հարճերը ութսուն, և օրիորդները անթիւ են։

9 Իմ աղաւնիս, իմ կատարեալս մէկ է. իր մօրը մէկ հատիկը՝ զինքը ծնանողին ընտրեալն է. զանիկայ աղջիկները տեսան, ու անոր՝ Երանի՛ ըսին. թագուհիները ու հարճերն ալ, և զանիկայ գովեցին։

է Հմր 4։

10 Ո՞վ է ասիկայ՝ որ արշալոյսի պէս կը նայի, որ լուսինի պէս գեղեցիկ, արևու պէս մաքուր, է դրօշակիր զօրքերու պէս ահարկու է։

† Կամ՝ պըտուղները

ը Գլ․ է․ 12։

11 Ընկոյզներուն պարտէզը իջայ, որ ձորին †կանանչութիւնը տեսնեմ, և ը նայիմ թէ արդեօք որթը ծլեցա՞ւ, ու նռնենիները ծաղկեցա՞ն։

12 Ես չգիտցած՝ իմ հոգիս Ամինադաբին կառքերուն պէս ըրաւ զիս։

13 Դարձի՛ր՝ դարձի՛ր, ո՛վ Սողոմացիդ, դարձի՛ր՝ դարձի՛ր, որ քեզ տեսնենք։

Ի՞նչ պիտի տեսնէք Սողոմացիին վրայ։ Իբրև երկու բանակներու գունդը։

## ԳԼ․ Է

1 Եկեղեցիին շնորհքներուն վրայով ուրիշ ստորագրութիւն մը։ 10 Եկեղեցին կը խոստովանի իր հաւատքը ու բաղձանքը։

ա Սաղ․ խե․ 13։

1 Ի՜նչ գեղեցիկ են քու քայլերդ կօշիկներով՝ ա ո՛վ իշխանի աղջիկ. քու բարձերուդ կազմուածքը՝ երևելի արուեստաւորի մը ձեռքով շինուած մանեակներու կը նմանի։

2 Քու պորտդ՝ ըմպելիքով լեցուն բոլորակ թասի մը կը նմանի. քու փորդ՝ շուշանով պատած ցորենի շեղջին պէս է։

բ Գլ․ դ․ 5։

3 բ Քու երկու ստինքդ նման է երկու ուլերու, որ այծեամի մը երկուորեակ ծնածն են։

գ Գլ․ դ․ 4։

4 գ Պարանոցդ՝ փղոսկրէ աշտարակի պէս է. աչքերդ՝ Եսեբոնը՝ Բաթրաբբիմի դրանը քովը եղող աւազաններուն կը նմանին. ունչդ՝ դէպ ՚ի Դամասկոս նայող Լիբանանին աշտարակին պէս է։

5 Գլուխդ քու վրադ Կարմեղոսի պէս, և գլխուդ հիւսուածքը՝ ծիրանիի պէս է. թագաւորը՝ այն խոպոպիքներուդ կապուած է։

6 Ո՛րչափ գեղեցիկ և ո՛րչափ քաղցր ես, իմ փափկալից սիրուհիս։

7 Քու հասակդ արմաւենիի՝ ու ստինքներդ ողկոյզներուն կը նմանին։

8 Ըսի. Արմաւենիին վրայ ելլեմ. անոր ոստերուն փակչիմ. և քու ստինքներդ՝ խաղողի ողկոյզներու պէս, ու ռնգացդ հոտը խնձորներու հոտին պէս ըլլայ։

‡ Կամ՝ շըրթունքներուն վրայ կը կաթի։

9 Եւ քու քիմքդ՝ ազնիւ գինիի պէս է, որ շիտակ կը վազէ իմ սիրականիս, ու քնացողներուն ‡շրթունքները կը խօսեցնէ"։

դ Գլ․ բ․ 16, զ․ 3։

10 դ Ես իմ սիրականինս եմ, և ե անոր բաղձանքը ինծի է։

ե Սաղ․ խե․ 11։

11 Եկո՛ւր իմ սիրականս, դաշտը ելլենք. գիւղերը գեղերու մէջ անցընենք.

զ Գլ․ զ․ 11։

12 Առտուանց կանուխ այգիները երթանք, ու զ տեսնենք թէ՝ որթը ծլե՞ր է, ծաղիկը բացուե՞ր է, և նռնենիները ծաղկե՞ր են. հոն իմ սէրս քեզի տամ։

է Ծն․ լ․ 14։
ը Մատ․ ժգ․ 52։

13 է Մանրագորները իրենց հոտը կու տան. ու մեր դռներուն մէջը՝ ը ամէն ընտիր պտուղներէն՝ թէ նոր և թէ հին, քեզի համար պահեր եմ, ո՛վ իմ սիրականս։

## ԳԼ․ Ը

1 Եկեղեցիին սէրը Քրիստոսի վրայ։ 6 Սիրոյ ուժգնութիւնը։ 8 Հեթանոսներուն կոչումը։ 14 Եկեղեցին Քրիստոսի գալուն համար կ՚աղօթէ։

1 Երանի՛ թէ իմ մօրս ստինքը ծծած եղբօրս պէս ըլլայիր. երբոր քեզ դուրսը գտնէի, պիտի համբուրէի, և զիս պիտի չանարգէին։

‖ Կամ՝ սորվեցնէր։
ա Առակ․ թ․ 2։

2 Քեզ առաջնորդելով իմ մօրս տունը կը տանէի, որ ինծի ‖սորվեցնես. քեզի ա հոտաւէտ գինիէն՝ իմ նռնենիիս օշարակէն կը խմցնէի։

Ն. Ք. գՔ. իրր 1014

բ Գլ. բ. 6 ։ գ Գլ. բ. 7 ։ գ. 5 ։ դ Գլ. գ. 6 ։ ե Ես. խթ. 16 ։ Երեմ. իբ. 24 ։ Անգ. բ. 23 ։ զ Տես Առակ. զ. 35 ։

3 [բ] Ձախ ձեռքը գլխուս տակը, ու աջ ձեռքը զիս կը գրկէր
4 [գ] Ո՛վ Երուսաղէմի աղջիկները՝ ձեզ կ'երդմնցընեմ, որ իմ սիրուհիս չարթընցընէք, ու չվերցընէք, մինչև որ ինքը չուզէ ։
5 [դ] Ո՞վ է ասիկայ՝ որ իր սիրականին կռթընած՝ անապատէն կ'ելլէ ։ Քեզ խնձորենիին տակը արթընցուցի. քու մայրդ քեզ հոն ծնաւ, քու ծնողդ քեզ հոն ծընաւ ։
6 [ե] Զիս քու սրտիդ վրայ կնիքի պէս՝ քու բազուկիդ վրայ կնիքի պէս դիր. վասն զի սէրը մահուան պէս զօրաւոր՝ ու նախանձը գերեզմանի պէս խիստ է. անոր կայծերը՝ սաստիկ բոցավառ կրակի կայծեր են ։
7 Շատ ջուրերը չեն կրնար սէրը մարել, ու գետերը զանիկայ չեն կրնար ընկղմել. և [զ] Թէ որ մէկ մարդ մը՝ սիրոյ փոխարէն իր տանը բոլոր ստացուածքը տայ, զանիկայ բոլորովին կ'անարգեն ։
8 Մէկ պզտիկ քոյր մը ունինք, ու անիկայ ստինք չունի. մեր քրոջը ինչ ընենք, անոր համար խօսուած օրը ։
9 Թէ որ անիկայ պարիսպ է, վրան մէկ արծաթէ աշտարակ մը շինենք. և թէ որ դուռ է, զանիկայ եղեւնափայտի տախտակներով պատենք ։
10 Ես պարիսպ եմ, ու իմ ստինքներս աշտարակներու պէս են. աս պատճառով անոր առջևը խաղաղութիւն գտածի պէս եղայ ։
11 Սողոմոն Բաաղամոնի մէջ այգի ունէր. [է] Անիկայ այգին պահապաններու տուաւ. ամէն մէկը անոր պտուղին համար հազար կտոր արծաթ կը բերէր ։
12 Իմ այգիս իմ առջևս է. ո՛վ Սողոմոն՝ հազարը քուկդ ըլլայ, ու երկու հարիւրը՝ անոր պտուղը պահպանողներուն ։
13 Ո՛վ պարտէզներու մէջ նստող՝ ընկերները քու ձայնդ կը լսեն. ինծի՛ ալ լսել տուր ։
14 [ը] Շո՛ւտ ըրէ՝ ո՛վ իմ սիրականս, ու խնկաբեր լեռներուն վրայ այծեման կամ եղնիկներու ձագի նման եղիր ։

Ն. Ք. գՔ. իրր 1014

է Մատ. իա. 33 ։ ը Գլ. բ. 14 ։ ը Տես Յայտ. իբ. 17, 20 ։ թ Գլ. բ. 17 ։

# ՄԱՐԳԱՐԷՈՒԹԻՒՆ ԵՍԱՅԵԱՅ

Ն. Ք. գՔ. իրր 760

ա Թուոց. ժբ. 6 ։ բ Բ Օր. լբ. 1 ։ Երեմ. բ. 12 ։ զ. 19 ։ իբ. 29 ։ Եզեկ. լզ. 4 ։ Միք. ա. 2 ։ զ. 1, 2 ։ գ Գլ. ե. 1, 2 ։ դ Երեմ. ը. 7 ։ ե Երեմ. թ. 3, 6 ։ զ Գլ. ե. 12 ։

## ԳԼՈՒԽ Ա

1 Եսայի կը գանգատի Յուդայի որդւոցը ապստամբութեանը համար. 5 անոնց վրայ գալու դատաստաններուն համար կ'ողբայ. 10 անոնց բոլոր երկրպագութեան պաշտօնները կը մերժէ. 16 խոստմունքներով ու սպառնալիքներով ապաշխարութեան կը յորդորէ զանոնք. 21 անոնց չարութեանը վրայ ողբալով՝ Աստուծոյ դատաստանները կը ծանուցանէ. 25 շնորհք կը խոստանայ Սիոնին, 28 ու չարերուն կործանումը կը գուշակէ ։

1 Ամովսի որդւոյն Եսայիին [ա] տեսիլքը՝ որ Յուդայի ու Երուսաղէմի վրայ տեսաւ, Յուդայի թագաւորներուն՝ Ոզիային, Յովաթամին, Աքազին ու Եզեկիային օրերը ։
2 [բ] Լսէ՛ ո՛վ երկինք, և ականջ դիր ո՛վ երկիր, վասն զի Տէրը կը խօսի. [գ] Զաւակներ մեծցուցի ու բարձրացուցի, և անոնք ինծի դէմ
3 ապստամբեցան ։ [դ] Եզը իր Տէրը կը ճանչնայ, ու էշը իր տիրոջը մսուրը, [ե] բայց Իսրայէլը [զ] զիս չը ճանչնար, իմ ժողովուրդս չիմանար ։
4 Վա՜յ մեղաւոր ազգին, անօրէնութիւնով ծանրացած ժողովուրդ, [է] չարագործներու սերունդ, ապականիչ զաւակներ. անոնք Տէրը թողուցին, Իսրայէլին Սուրբը բարկացուցին, ու ետ քաշուեցան ։
5 [ը] Ո՞ր մասերնուդ վրայ կրնաք զարնուիլ, երբոր ալ աւելի ապստամբիք ։ Բոլոր գլուխը հիւանդ՝ և
6 բոլոր սիրտը մարած է ։ Ոտքին թաթէն մինչև գլուխը՝ բնաւ անոր վրայ ողջ տեղ չմնաց. հարուածներ, վէրքեր ու շարաւալից խոցեր կան. [թ] Անոնք չգոցուեցան, չկապուեցան, ու եղով ալ չկակղացան ։
7 [ժ] Ձեր երկիրը աւերակ դարձեր է, ու ձեր քաղաքները կրակով այրուած են. ձեր արտերը աչքերնուդ առջևը օտարները կ'ուտեն, ու անոնք օտարներուն ըրած աւերակներուն պէս խոպանացած են ։
8 Ու Սիոնին աղջիկը՝ այգիի մէջ եղած խրճիթի պէս, վարունգի արտի մէջ եղած հիւղի պէս, պաշարուած քաղաքի պէս թողուած
9 մնացեր է ։ [ի] Եթէ որ զօրաց Տէրը մեզի քիչ մը մնացորդ թողուցած

Ն. Ք. գՔ. իրր 760

է Գլ. ծէ. 3, 4 ։ Մատ. գ. 7 ։ ը Գլ. թ. 13 ։ Երեմ. բ. 30 ։ ե. 3 ։ թ Երեմ. ը. 22 ։ ժ Բ Օր. իը. 51, 52 ։ ժա Յոբ. լէ. 18 ։ Ողբ. բ. 6 ։ Երեմ. դ. 17 ։ ի Ողբ. գ. 22 ։ Հռով. թ. 29 ։

Ն. Ք. Գ. Ք.
Իրր 760

Ծն. ԺԹ. 24։
Բ Օր. ԼԲ. 32։ Եզեկ. ԺԶ. 46։
Հ ա Թագ. ԺԵ. 22։ Սաղ. Ծ. 8, 9։ Ծա. 13։ Առակ. ԺԱ. 8։ Իա. 27։ Գլ. ԿԶ. 3։ Երեմ. Զ. 20։ Է. 21։ Ամով. Ե. 21, 22։ Միք. Զ. 7։
Ել. ԻԳ. 17։ ԼԴ. 23։ Մատ. ԺԵ. 9։
Յովել. Ա. 14։ Բ. 15։
Թուոց. ԻԸ. 11։
Ղև. ԻԴ. 2։ Ա։ Ովս. Դ. 6։
Գլ. ԽԳ. 24։
Յոբ. ԻԷ. 9։ Սաղ. ԿԶ. 2։ Առակ. Ա. 28։ Գլ. ԾԹ. 2։ Երեմ. ԺԴ. 12։ Միք. Գ. 4։
Սաղ. ԿԶ. 13։ Ա Տիմ. Բ. 8։
Գլ. ԾԹ. 8։
Երեմ. Դ. 14։
Սաղ. ԼԴ. 14։ ԼԷ. 27։ Ամով. Ե. 15։ Հռով. ԺԲ. 9։ Ա Պետ. Գ. 11։
Երեմ. ԻԲ. 3. 16։ Միք. Զ. 8։ Զաք. Է. 9։ Ը. 16։
Գլ. ԽԳ. 26։ Միք. Զ. 2։
Սաղ. ԾԱ. 7։ Յայտ. Է. 14։
Թուոց. ԻԳ. 19։ Տիտ. Ա. 2։
Երեմ. Բ. 20, 21։
Երեմ. Զ. 28, 30։ Եզեկ. ԻԲ. 18, 19։
Ովս. Թ. 15։
Առակ. ԻԹ. 24։
Երեմ. ԻԲ. 17։ Եզեկ. ԻԲ. 12։ Ովս. Դ. 18։ Միք. Գ. 11։ Է. 3։

չըլլար, մենք Սոդոմին պէս պիտի
ըլլայինք, ու Գոմորին պիտի նմա-
նէինք։
10 Լսեցէ՛ք Տէրոջը խօսքը, ո՛վ Սո-
դոմի իշխաններ, ականջ դրէք մեր
Աստուծոյն օրէնքին, ո՛վ Գոմորի
11 ժողովուրդ։ Ի՞նչ պէտք է ինծի
ձեր զոհերուն շատութիւնը, կ՚ը-
սէ Տէրը. Ես խոյերուն ողջակէզ-
ներէն, ու պարարտ անասուննե-
րուն ճարպէն կշտացած եմ, և
զուարակներուն ու գառներուն և
նոխազներուն արիւնները չեմ ա-
12 խորժեր։ Երբոր կու գաք իմ
առջևս երևնալու՝ ո՞վ պահանջեց
ձեզմէ, որ սանկ իմ սրահներս
13 կոխէք։ Ալ ինծի ունայն ընծա-
ներ մի՛ բերէք. Ես խունկը ինծի
պիղծ է. ամսագլուխներուն ու
շաբաթներուն՝ և ժողովներու
գումարուելուն չեմ կրնար տա-
նիլ. Ես տօնախմբութիւնը ան-
14 գամ անօրէնութիւն է։ Ձեր
ամսագլուխներէն ու տօներէն կը
զզուի իմ հոգիս. անոնք իմ վրաս
ծանր բեռ եղան. վերցընելէն յոգ-
15 նեցայ։ Ուստի երբոր ձեռքեր-
նիդ կը տարածէք, աչքերս ձեզմէ
պիտի ծածկեմ. Նաև երբոր ա-
ղօթքնիդ կը շատցընէք, պիտի
չլսեմ. ինչու որ ձեռքերնիդ ա-
րիւնով լեցուն են։
16 Լուացուեցէ՛ք, մաքրուեցէ՛ք,
իմ աչքերուս առջևէն ձեր չար
գործքերը մէկդի՛ ըրէք, չարու-
թիւն գործելէն դադարեցէ՛ք.
17 Բարութիւն ընել սորվեցէք, ի-
րաւունքը փնտռեցէ՛ք, զրկուա-
ծին ուղղութիւն ըրէք, որբին
դատաստանը տեսէ՛ք, ու որբևա-
րիին դատը պաշտպանեցէ՛ք։
18 Հիմա եկէ՛ք վիճաբանինք, կ՚ը-
սէ Տէրը. Թէ որ ձեր մեղքերը
կրկնակի կարմիրի պէս են, ձիւ-
նի պէս պիտի ճերմըկնան. և թէ
որ որդան կարմիրի նման են, ասրի
19 պէս ճերմակ պիտի ըլլան։ Թէ որ
դուք յօժարիք ու հնազանդիք,
երկրին բարիքը պիտի ուտէք.
20 Բայց թէ որ չէք մերժելով ապըս-
տամբէք, սուրը պիտի ուտէ ձեզ,
ինչու որ Տէրոջը բերանը խօսե-
ցաւ ասիկայ։
21 Ի՜նչպէս պոռնկեցաւ այն հա-
ւատարիմ քաղաքը. անիկայ իրա-
ւունքով լեցուն էր, ու անոր մէջը
արդարութիւն կը բնակէր. բայց
հիմա մարդասպաններու բնակարան
22 է։ Քու արծաթդ կղկղանք դար-
ձաւ. գինիիդ մէջը ջուր խառ-
23 նուած է։ Քու իշխաններդ ա-
պըստամբ՝ ու գողերու ընկեր ե-
ղան. ամէնքն ալ կաշառք սի-
րելով՝ պարգևներ կը փնտռեն. ա-
նոնք որբին դատաստանը չեն տես-
ներ, և որբևարիին դատը անոնց
առջևը չգար։
24 Անոր համար զօրաց Եհովայ Տէ-
րը, Իսրայէլին Հզօրը ասանկ կ՚ը-
սէ. Ա՜ւաղ, իմ հակառակորդ-
ներուս հատուցում պիտի ընեմ,
ու թշնամիներէս վրէժ պիտի առ-
25 նեմ։ Ու իմ ձեռքս քու վրադ
պիտի դարձընեմ, և քու կըղ-
կղանքդ իբր թէ բորակով պիտի
մաքրեմ, ու բոլոր անագդ մէկդի
26 պիտի զատեմ։ Ու քու դա-
տաւորներդ առջինին պէս, ու
խորհրդականներդ սկիզբէն եղա-
ծին պէս նորէն պիտի հաստա-
տեմ. անկէ ետքը դուն պի-
տի կոչուիս, արդարութեան
քաղաք՝ և հաւատարիմ աւան։
27 Սիօնը դատաստանով պիտի փըր-
կուի, և հոն դարձողները՝ արդա-
28 րութեամբ։ Բայց անօրէնները
ու մեղաւորները մէկտեղ պիտի
ջարդուին, և անոնք որ Տէրը կը
թողուն, բնաջինջ պիտի ըլլան։
29 Քանզի ձեր ցանկացած բևեկնինե-
րէն պիտի ամչնան. և ձեր ընտ-
րած պարտէզներուն համար ա-
30 մօթով պիտի մնաք։ Վասն զի
տերևները թառամած բևեկնիի պէս,
և ջուր չունեցող պարտէզի պէս
31 պիտի ըլլաք։ Ու զօրութիւն ու-
նեցողը՝ խծուծի պէս, և անոր գոր-
ծը կայծի նման պիտի ըլլայ, ու
երկուքն ալ մէկէն պիտի այրին,
և մարող պիտի չգտնուի։

Ն. Ք. Գ. Ք.
Իրր 760

Երեմ. Ե. 28։ Զաք. Է. 10։
Բ Օր. ԻԲ. 63։ Եզեկ. Ե. 13։
Երեմ. Զ. 29։ Թ. 7։ Մաղ. Գ. 3։
* Կամ՝ մաքրութիւնով
Երեմ. ԼԳ. 7։
Զաք. Ը. 3։
Յոբ. ԼԱ. 3։ Սաղ. Ա. 6։ Ե. 6։ Հգ. 27։ ՂԲ. 9։ Հգ. 35։
Գլ. ԾԷ. 5։
Գլ. ԿԵ. 3։ ԿԶ. 17։

## ԳԼ. Բ

1 Մարգարէն Քրիստոսի թագաւորութեանը հաստատուիլը կը գուշակէ 6 կը ցուցնէ թէ ժողովուրդին չարութիւնն է պատճառը՝ որ Աստուած զանիկայ կը մերժէ 10 Աստուծոյ վեհափառութեանը զօրաւոր գործքերը յիշելով՝ կը յորդորէ մարդիկը որ անկէ վախնան։

1 Ամովսի որդւոյն Եսայիին՝ Յուդա-
յի ու Երուսաղէմի վրայ տեսած
բաներուն խօսքը։
2 Ետքի օրերը պիտի ըլլայ որ Տէ-
րոջը տանը լեռը՝ լեռներուն գլ-
խուն վրայ պիտի հաստատուի, և
բլուրներէն վեր պիտի բարձրանայ,
ու բոլոր հեթանոսները հեղեղի
3 պէս պիտի դիմեն անոր։ Ու շատ
ժողովուրդներ պիտի երթան ու ը-
սեն. Եկէք՝ Եհովայի լեռը՝ Յա-
կոբին Աստուծոյն տունը ելլենք,
որ մեզի իր ճամբաները սորվեցընէ.
ու անոր շաւիղներուն մէջը քա-
լենք. ինչու որ օրէնքը՝ Սիօնէն,
ու Տէրոջը խօսքը՝ Երուսաղէմէն
4 պիտի ելլէ. Ու անիկայ հեթանոսնե-
րուն մէջ դատաստան պիտի տեսնէ,
և շատ ժողովուրդներ պիտի յան-

Միք. Դ. 1, 2։
Սաղ. ԿԸ. 15. 16։
Սաղ. ՀԲ. Գլ. ԻԵ. 13։
Երեմ. ԼԱ. 6։ Ծ. 5։ Զաք. Ը. 21, 23։
Ղուկ. ԻԴ. 47։

Ն. Ք. ԴՔ.
ԻՐՐ 977

ղ Սաղ. խզ. 9 ։ Ովս. բ. 18 ։ Զաք. թ. 10 ։
ե Սաղ. հբ. 3, 7 ։
ը Եփե. ե. 8 ։
թ Թու. իդ. 7 ։
ժ բ Օր. ժը. 14 ։
ի Սաղ. ծզ. 35 ։ Երեմ. ժ. 2 ։
լ բ Օր. ժէ. 16, 17 ։
խ Երեմ. բ. 28 ։
ծ Հմր 19, 21 ։ Յայտ. զ. 15 ։
կ Հմր 17, Գլ. ե. 15, 16 ։ ժգ. 11 ։
հ Գլ. դ. 1 ։ ժա. 10, 11 ։ ժբ. 1, 4 ։ իդ. 21 ։ իե. 9 ։ իզ. 1 ։ իէ. 1, 2, 12, 13 ։ իը. 5 ։ իթ. 18 ։ լ. 23 ։ ծբ. 6 ։ Երեմ. լ. 7, 8 ։ Եզեկ. լը. 14, 19 ։ լթ. 11, 22 ։ Ովս. բ. 16, 18, 21 ։ Յովէլ. գ. 18 ։ Ամով. թ. 11 ։ Աբդ. 8 ։ Միք. դ. 6 ։ ե. 10 ։ է. 11, 12 ։ Սոփ. գ. 11, 16 ։ Զաք. թ. 16 ։
ձ Գլ. ժգ. 8 ։ լէ. 24 ։ Եզեկ. լա. 3 ։ Զաք. ժա. 1, 2 ։
ղ Գլ. լ. 25 ։
ճ գ Թագ. ժ. 22 ։
մ Հմր 11 ։
յ Հմր 10 ։ Ովս. ժ. 8 ։ Ղու. իգ. 30 ։ Յայտ. զ. 16 ։ թ. 6 ։
ն բ Թես. ա. 9 ։
շ Գլ. լ. 32 ։ Ագգ. բ. 6, 21 ։ Եբր. ժբ. 26 ։
ո Գլ. լ. 22 ։ լա. 7 ։

դիմանէ ։ Ու ղանոնք իրենց սու-
րերը խոփեր՝ և իրենց նիզակները
յօտոցներ պիտի շինեն . ազգ ազգի
վրայ սուր պիտի չվերցընէ , և ե ալ
պատերազմ պիտի չսորվին ։
5 Ո՛վ Յակոբին տունը՝ եկէ՛ք ըՏէ-
6 րոջը լուսովը քալենք ։ Ինչու որ
դուն քու ժողովուրդդ Յակոբին
տունը թողուցիր , վասն զի թ ա-
րևելքին ժողովուրդներովը լեցուեցան ,
և ժ Փղշտացւոց պէս հմայութիւն
կ՚ընեն , ու ի օտարներու որդւոցը
7 հետ դաշնադիր եղան ։ Եւ լ ա-
նոնց երկիրը արծաթով ու ոսկիով
լեցուեցաւ , ու անոնց գանձերը ան-
թիւ եղան . անոնց երկիրը ձիերով
լեցուեցաւ , և անոնց կառքերը ան-
8 թիւ են ։ Խ կուռքերով ալ լեցուն
է անոնց երկիրը . իրենց ձեռացը
գործքերուն երկրպագութիւն կ՚ը-
նեն , անոնց՝ որ իրենց մատերը շի-
9 նեցին ։ Եւ ռամիկ մարդը ծռե-
ցաւ , ու ազնուականը խոնարհե-
ցաւ , և անոնց պիտի չներես ։
10 ծ Տէրոջը վախին երեսէն , և անոր
վեհափառութեանը մեծութենէն՝
վէմին մէ՛ջը մտիր , ու հողին մէ՛ջը
11 պահուէ ։ կ Մարդուն ամբարտա-
ւան աչքերը պիտի խոնարհին , և
մարդոց հպարտութիւնը պիտի
ցածնայ , ու հ ան օրը միայն Տէրը
12 պիտի բարձրանայ ։ Ինչու որ զօ-
րաց Տէրոջը օրը՝ ամէն ամբարտա-
ւաններուն ու բարձրամիտներուն
վրայ , և ամէն հպարտացածներուն
վրայ պիտի ըլլայ . ու անոնք պիտի
13 խոնարհին ։ Եւ ձ Լիբանանու ա-
մէն բարձրացած ու վերցած ե-
ղեւիններուն վրայ , ու Բասանի ամէն
14 կաղնիներուն վրայ , Եւ ղ ամէն
բարձր լեռներուն վրայ , ու ամէն
15 բարձրացած բլուրներուն վրայ , Եւ
ամէն բարձր աշտարակներուն վրայ ,
ու ամէն ամուր պարիսպներուն վը-
16 րայ , Եւ ճ Թարսիսի ամէն նաւե-
րուն վրայ , ու ամէն հաճելի երե-
ցած բաներուն վրայ պէտք ըլլայ ։
17 Եւ մ մարդուն ամբարտաւանու-
թիւնը պիտի ցածնայ , ու մարդոց
հպարտութիւնը պիտի խոնարհի ,
և ան օրը միայն Տէրը պիտի բարձ-
18 րանայ ։ Ու կուռքերը բնաջինջ
19 պիտի ըլլան ։ Եւ յ քարայրներու
մէջ՝ ու երկրին խոռոչները պիտի
մտնեն ն Տէրոջը վախին երեսէն , և
անոր վեհափառութեանը մեծու-
թենէն , շ երբոր ինքը երկիրը սար-
սելու ելլէ ։
20 ո Ան օրը մարդը՝ խլուրդներուն ու
չղջիկներուն պիտի նետէ իր արծա-
թեղէն կուռքերը , ու իր ոսկեղէն
կուռքերը , որոնք իրեն շիներ են
երկրպագութիւն ընելու համար .
21 չ Որ Տէրոջը վախին երեսէն , ու անոր
վեհափառութեանը մեծութենէն՝
ապառաժներուն ծակերը , ու վէ-
մերուն ծերպերը մտնէ , երբոր Ա-
22 նիկայ երկիրը սարսելու ելլէ ։ պ Ե՛տ
կեցէ՛ք մարդէն՝ ջ որուն շունչը իր
ռնգացը մէջն է . վասն զի ի՞նչ
բանի մէջ հաշուի կը համարուի
ան ։

ԳԼ. Գ

1 Մեղքէ յառաջ եկած շփոթութիւնը ։ 9 Ժո-
ղովուրդին անզգամութիւնը ։ 12 Իշխաններուն բռնաւորութիւնը ու արծաթսիրութիւնը ։ 16 Կնիկներուն ամբարտաւանութեան պատճառովը գալու դատաստանները ։

1 Ինչու որ ահա՛ զօրաց Եհովայ Տէ-
րը Երուսաղէմէն ու Յուդայէն
ա պիտի վերցընէ գաւազանը և
բ ցուպը , հացին բոլոր զօրութիւնը
ու ջուրին բոլոր զօրութիւնը .
2 գ Կտրիճը ու պատերազմող մարդը ,
դատաւորը ու մարգարէն , գուշա-
3 կութիւն ընողը ու ծերը , Յիսնա-
պետը ու պատուաւոր մարդը ,
խորհրդականը ու իմաստուն ճար-
տարապետը և հանճարեղ կախար-
4 դը ։ Եւ դ անոնց վրայ մանուկնե-
րը իշխաններ պիտի կարգեմ , ու
անոնց վրայ տղաքը պիտի իշխեն ։
5 Եւ ժողովուրդը իրարմէ՝ ու ընկերը
իր ընկերէն հարստահարութիւն
պիտի կրեն . մանուկները ծերերուն
դոռոզութիւն պիտի ընեն , և ա-
նարգները պատուականներուն ։
6 Ան ատենը պիտի բռնէ մարդ՝ իր
հօրը տունէն եղող իր եղբայրը , ու
ըսէ . Դուն հանդերձ ունիս , մեր
վրայ իշխան եղիր , ու աս աւերակը
7 քու ձեռքիդ տակը ըլլայ ։ Ան օրը
անիկայ * պատասխան պիտի տայ ՝
ու ըսէ . Ես † առաջնորդ չեմ ըլ-
լար , ինչու որ իմ տանս մէջ ոչ
հաց կայ , և ոչ հանդերձ . զիս ժո-
ղովուրդին վրայ իշխան մի՛ կար-
8 գէք ։ Ինչու որ ե Երուսաղէմը
սասանեցաւ , և Յուդան ինկաւ .
վասն զի անոնց լեզուները ու գործ-
քերը Տէրոջը դէմ են , որ բարկա-
ցընեն անոր փառաւոր աչքերը ։
9 Անոնց երեսներուն տեսքը իրենց
դէմ կը վկայէ , և իրենց մեղքերը
զ Սոդոմի պէս կը յայտնեն , չեն
ծածկեր . վա՜յ անոնց անձին , ինչու
10 որ իրենց վրայ չարիք բերին ։ Ար-
դարին ըսէ՛ք՝ է որ իրեն աղէկ պիտի
ըլլայ . ինչու որ անոնք ը իրենց
գործքերուն պտուղը պիտի ու-
11 տեն ։ Վա՜յ անօրէնին՝ թ գէշ պիտի
ըլլայ անոր . ինչու որ անոր ձեռացը
գործքերուն փոխարէնը իրեն պիտի
12 տրուի ։ Բայց իմ ժողովուրդիս
վրայ ժ տղայք բռնաւորութիւն կ՚ը-
նեն , ու անոր վրայ կնիկներ կը տի-

Ն. Ք. ԴՔ.
ԻՐՐ 760

չ Հմր 10, 19 ։
պ Սաղ. ճխզ. 3 ։ Երեմ. ժէ. 5 ։
ջ Յոբ. իէ. 3 ։
ա Երեմ. լէ. 21 ։ լը. 9 ։
բ Ղև. իզ. 26 ։
գ դ Թագ. իդ. 14 ։
դ Ժող. ժ. 16 ։
* Կամ՝ երդում պիտի ընէ , Եբր. պիտի վերցընէ ։
† Կամ՝ բժիշկ
ե Միք. գ. 12 ։
զ Ծն. ժդ. 13 ։ ժը. 20, 21 ։ ժթ. 5 ։
է Ժող. ը. 12 ։
ը Սաղ. ճիը. 2 ։
թ Սաղ. ժա. 6 ։ Ժող. ը. 13 ։
ժ Հմր 4 ։

Ն . Ք . ԴՔ . ԻՐ 760

րէն . ով իմ ժողովուրդս՝ քու ա-
ռաջնորդներդ քեզ գլխէ կը հանեն ,
և քու շաւիղներուդ ճամբան կը
խանգարեն ։
13 Տէրը դատաստան տեսնելու ե-
լեր է , ու ժողովուրդները դատելու
14 կայներ է ։ Տէրը ինքը դատաս-
տան ընելու պիտի գայ՝ իր ժողո-
վուրդին ծերերուն ու իշխաննե-
րուն հետ . ինչու որ դուք այգին
այրեցիք , աղքատէն յափշտա-
15 կուածը ձեր տունն է ։ Ձեզի ի՞նչ
եղաւ՝ որ իմ ժողովուրդս կը
զրկէք , ու աղքատներուն երեսը
կը ճնշէք , կ՚ըսէ Եհովայ՝ զօրաց
Տէրը ։
16 Եւ Տէրը այսպէս ըսաւ . Որով-
հետև Սիոնի աղջիկները հպարտա-
ցան , և բարձրապարանոց կը քա-
լեն , անհամեստ ակնարկութիւններ
կ՚ընեն , մանրաքայլ կ՚երթան , ու
17 ոտքերով շաչիւն կը հանեն . Տէրն
ալ Սիոնի աղջիկներուն գագաթը
պիտի կնտացնէ , և Տէրը անոնց
18 ամօթոյքը պիտի մերկացնէ ։ Եւ
ան օրը Տէրը պիտի վերցնէ անոնց
ոտքի մեհեանդներուն փառքը , ու
ցանցակերպ ծամակալները և մա-
19 հիկները , Գինտերը , ապարանջան-
20 ները ու շղաշատեռները , Ապարօշ-
ները , ոտքի շղթաները ու գօտի-
ները , անուշահոտ օղիներուն տու-
21 փերը , Հմայեակները , Մատանինե-
22 րը և քիթերնուն օղերը , Պատմու-
ճանները , վերարկուները , ծած-
23 կոցները ու քսակները . Հայելիները
ու բեհեզները , խոյրերը ու քօղե-
24 րը ։ Եւ պիտի ըլլայ որ՝ անուշա-
հոտութեան տեղ՝ փտութիւն , ու
գօտիի տեղ՝ չուան , և գանգուր
մազերու տեղ՝ կնտութիւն , և
լանջազգեստ կամարի տեղ՝ խորգեղէն
գօտի , ու գեղեցկութեան տեղ՝
25 խարան պիտի ըլլայ ։ Քու մար-
դիկներդ սրով պիտի իյնան , ու
կտրիճներդ ալ պատերազմի մէջ ։
26 Եւ անոր դռները պիտի ողբան
ու սուգ բռնեն , և անիկայ ամայի
ըլլալով՝ գետինը պիտի նստի ։

ԳԼ . Դ

1—6 Երբոր չարիքները խիստ շատնան , Քրիս-
տոսի թագաւորութիւնը ապաստանարան մը
պիտի ըլլայ ։

1 Եւ այն օրը եօթը կնիկ մէկ էրիկ
մարդը պիտի բռնեն ու ըսեն .
Մեր հացը ուտենք , ու մեր հան-
դերձը հագնինք , բայց միայն քու
անունդ կանչուի մեր վրայ , մեր
նախատինքը վերցնելու համար ։
2 Ան օրը Տէրոջը շառաւիղը փա-
ռաւոր ու պատուական պիտի ըլ-
լայ , և Իսրայէլի փրկուածներուն՝
երկրին պտուղը պարծանաց և պա-
3 տուոյ համար պիտի ըլլայ ։ Եւ պի-
տի ըլլայ որ՝ Սիօնի մէջ մնացածը ,
ու Երուսաղէմի մնացորդը , այսինքն
Երուսաղէմի մէջ բոլոր ողջ* կեցող-
4 ները սուրբ պիտի ըսուին , Երբ-
որ Տէրը Սիոնի աղջիկներուն աղտը
լուայ , ու դատաստանի հոգիով
և այրող հոգիով Երուսաղէմի ա-
5 րիւնները անոր մէջէն սրբէ ։ Եւ
Տէրը Սիոն լեռանը ամէն տեղերուն
վրայ՝ ու անոր ժողովքներուն վրայ՝
ցորեկը ամպ և մէգ , ու գիշերը
փայլուն կրակի բոց պիտի ստեղ-
ծէ . ինչու որ բոլոր փառքին վրայ
6 հովանի պիտի ըլլայ ։ Եւ ցորեկը
վրան պիտի ըլլայ տաքութեան հա-
մար հովանի՝ և մրրիկի ու անձրևի
համար ապաստանարան և ծած-
կոց ըլլալու ։

ԳԼ . Ե

1 Մէկ այգիի մը առակով՝ Աստուած իր անա-
չառ դատաստանը կ՚արդարացընէ ։ 8 Ագա-
հութեան , 11 անառակութեան , 13 ամբարըշ-
տութեան , 20 և անիրաւութեան վրայով
Աստուծոյ ըրած դատաստանները ։ 26 Անոր
դատաստանները ՚ի գործ դնողները ։

1 Հիմա իմ սիրականիս երգը իմ
սիրելիիս երգեմ իր այգիին
վրայով . իմ սիրելիս այգի մը ու-
նէր խիստ պտղաբեր բլուրի մը վը-
2 րայ . Զանիկայ ցանկով պատեց ,
քարերը հանեց մէջէն , և ընտիր որ-
թեր տնկեց , ու անոր մէջտեղը
աշտարակ շինեց , և հոն հնձան մըն
ալ փորեց . ու կը սպասէր որ խա-
ղող տար , բայց անիկայ ազոխ
տուաւ ։
3 Ուստի հիմա դուք ով Երուսա-
ղէմի բնակիչներ ու Յուդայի մար-
դիկ՝ իմ՝ ու այգիիս մէջտեղը դա-
4 տաստան ըրէք ։ Իմ այգիիս՝ ալ
ուրիշ ի՞նչ պէտք էր ընել , որ ես
անոր չըրի . ինչո՞ւ համար՝ երբոր
ես խաղող տալուն կը սպասէի , ա-
5 նիկայ ազոխ տուաւ ։ Եւ հիմա ես
ձեզի պատմեմ՝ թէ ինչ պիտի ընեմ
իմ այգիիս . անոր ցանկը պիտի
քակեմ , որ անոնց ճարակ ըլլայ ,
անոր պատերը պիտի փլցնեմ , որ
6 ոտնակոխ ըլլայ . Խոպանացած պի-
տի թողում . անիկայ պիտի չյօ-
տուի ու չըրուի , հապա ցախ ու
փուշ պիտի բուսցնէ . և ամպե-
րուն պիտի պատուիրեմ որ անոր
7 վրայ անձրև չտեղան ։ Ինչու որ
զօրաց Տէրոջը այգին՝ Իսրայէլի
տունն է , ու Յուդայի մարդիկը
անոր ախորժելի տունկն է . և անի-
կայ իրաւունքի կը սպասէր , և ահա
արիւնհեղութիւն , արդարութեան՝
և ահա աղաղակ ։
8 Վա՜յ անոնց՝ որոնք տունը տան

Margin references:
Ը Գլ . Թ . 16 ։
ւ Միք . Ղ . 2 ։
Խ Գլ . Ե . 7 ։ Մատ . ԻԱ . 33 ։
Ծ Գլ . ԾԸ . 4 ։ Միք . Գ . 2 , 3 ։
Կ Գլ . ԽԵ . 2 , 3 ։ Երեմ . ԺԳ . 22 ։ Նաւ . Գ . 5 ։
Հ Դատ . Ը . 21 ։
Յ Գլ . ԻԲ . 12 ։ Միք . Ա . 16 ։
Ղ Երեմ . ԺԴ . 2 ։ Ողբ . Ա . 4 ։
Ճ Ողբ . Բ . 10 ։
Ա Գլ . Բ . 11 , 17 ։
Բ Բ Թես . Գ . 12 ։
Գ Ղու . Ա . 25 ։
Դ Երեմ . ԻԴ . 5 ։ Զաք . Գ . 8 ։ Զ . 12 ։
* Եբր . Գը-րուածները . տես Փիլ . Դ . 3 ։ Յայտ . Դ . 5 ։
Ե Գլ . Կ . 21 ։
Զ Մաղ . Գ . 2 , 3 ։
Է Ել . ԺԳ . 21 ։
Ը Զաք . Բ . 5 ։
Թ Գլ . Ը . 14 ։
Ժ Գլ . ԻԵ . 4 ։
Ա Սաղ . Հ . 8 ։ Երգ . Ը . 12 ։ Գլ . ԻԷ . 2 ։ Երեմ . Բ . 21 ։ Մատ . ԻԱ . 33 ։ Մար . ԺԲ . 1 ։ Ղու . Ի . 9 ։
Բ Բ Օր . ԼԲ . 6 ։ Գլ . Ա . 2 , 3 ։
Գ Հռով . Գ . 4 ։
Դ Սաղ . Ձ . 12 ։
Ե Միք . Բ . 2 ։

Ն. Ք. Գ. Ք. Իրր 760

կը յարեն, ագարակը ագարակի
վրայ կ'աւելցընեն, մինչև որ տեղ
մը չմնայ, ու դուք մինակ բնակիք
9 երկրին մէջը։ Զօրաց Տէրը իմ
ականջիս խօսեցաւ ըսելով. Յիրա-
ւի շատ տուներ աւերակ պիտի ըլ-
լան, մեծ ու գեղեցիկ տուներ, ու
անոնց մէջը բնակող պիտի չըլլա-
10 նուի։ Վասն զի տասը լծավար այ-
գին՝ մէկ բաթ պիտի տայ, ու մէկ
քոռ սերմը մէկ արդու պիտի տայ։
11 Վա՜յ անոնց՝ որ առաւօտուն կա-
նուխ կ'ելլեն, ու ցքի ետևէն ետևէ
կ'ըլլան, և իրիկունն ալ կ'ուշա-
նան, մինչև որ գինին իրենց զիրենք
12 տաքցընէ։ Եւ անոնց խնճոյքնե-
րուն մէջ քնար ու տաւիղ, թըմ-
բուկ ու սրինգ և գինի կը գտնուի.
բայց Տէրոջը գործերուն ուշադ-
րութիւն չեն ըներ, և անոր ձեռա-
13 ցը գործքերուն չեն նայիր։ Անոր
համար իմ ժողովուրդս Տէրը
չճանչնալով՝ գերի կ'իյնայ, ու ա-
նոր մեծամեծ մարդիկը սով կը կը-
րեն, և բազմութիւնը ծարաւէն կը
ցամքին։
14 Անոր համար դժոխքը ինքզինքը
կը լայնցընէ, ու բերանը չափէ
դուրս կը բանայ. և անոր պար-
ծանքը ու բազմութիւնը և աղա-
ղակը ու զուարճութիւնը անոր մէջը
15 պիտի իջնէ։ Եւ ռամիկ մարդը
պիտի իյնայ, ու ազնուականը պի-
տի խոնարհի. ամբարտաւաններուն
16 աչքերն ալ պիտի խոնարհին։ Եւ
զօրաց Տէրը իրաւունքով պիտի
բարձրանայ, ու Սուրբն Աստուած
արդարութիւնով պիտի *փառա-
17 ւորի։ Եւ գառնուկները իրենց սո-
վորութեանը պէս պիտի արածին,
ու հարուստներուն աւերակները՝
օտարները պիտի ուտեն։
18 Վա՜յ անոնց՝ որ անօրէնութիւնը
ունայնութեան չուաններով կը
քաշեն, ու մեղքը՝ սայլի փոկերով
19 քաշելու պէս. Որոնք կ'ըսեն.
Թող արտորայ, իր գործը շու-
տով կատարէ, որ զանիկայ տես-
նենք, և Իսրայէլի Սուրբին խոր-
հուրդը թող մօտենայ գայ, որ
20 զանիկայ գիտնանք։ Վա՜յ անոնց՝
որ չարին բարի կ'ըսեն, ու բարիին
չար, որ խաւարը լոյսի տեղ՝ ու
լոյսը խաւարի տեղ կը դնեն, որ
դառնը քաղցրի տեղ՝ ու քաղցրը
21 դառնի տեղ կը դնեն։ Վա՜յ ա-
նոնց՝ որ իրենց աչքին իմաստուն՝
և իրենց առջին խոհական են.
22 Վա՜յ անոնց՝ որ գինի խմելու զօ-
րաւոր՝ ու ցքի խառնելու կտրիճ
23 են. Որոնք կաշառքի համար ամ-
բարիշտը կ'արդարացընեն, և ար-
դարը իր իրաւունքէն կը զրկեն։

* Եբր. փառաւորի։

24 Անոր համար ինչպէս որ կրակին
բոցը յարդը կ'ուտէ, ու չոր խոտը
բոցին մէջը կը հատնի, անոնց ալ
արմատը փտութեան պէս
պիտի ըլլայ, ու անոնց ծաղիկը
փոշիի պէս վեր պիտի ելլէ. ինչու
որ զօրաց Տէրոջը օրէնքը մերժե-
ցին, և Իսրայէլի Սուրբին խօսքը
25 անարգեցին։ Անոր համար Տէ-
րոջը բարկութիւնը իր ժողովուր-
դին դէմ բորբոքեցաւ, ու անոնց
վրայ ձեռքը երկնցուց ու զարկաւ
անոնք, անանկ որ լեռները դողա-
ցին, ու անոնց դիերը ճամբանե-
րուն վրայ աղբի պէս մնացին.
Այսու ամենայնիւ անոր բարկու-
թիւնը չիջաւ, հապա անոր ձեռքը
տակաւին երկնցած է։
26 Եւ հեռաւոր ազգաց դրօշակ
պիտի վերցընէ, ու զանոնք երկ-
րիս ծայրէն սուլելով պիտի կան-
չէ, և ահա անոնք շուտով ու ա-
27 րագութեամբ պիտի գան։ Անոնց
մէջը մէկը յոգնած պիտի չըլլայ,
ու մէկը պիտի չսահի. մէկը պիտի
չմրափէ ու չքնանայ. մէկուն մէջ-
քին գօտին պիտի չքակուի, ոչ
ալ կօշիկին կապը պիտի կտրուի։
28 Անոնց նետերը սուր են, ու բոլոր
աղեղները լարուած. անոնց ձիե-
րուն սմբակները գայլախազի կը
նմանին, և անոնց անիւները
29 մրրիկի պէս են։ Անոնց մռնչիւնը
առիւծին պէս է. կորիւններու պէս
կը մռընչեն. կը գոչեն, ու կողո-
պուտը կը յափշտակեն, և զանիկայ
կը փախցընեն, ու ազատող մը
30 չկայ։ Եւ այն օրը անոնց վրայ
պիտի գոչեն ծովուն գոչելուն պէս,
ու երբոր մէկը երկրին նայի, ահա
խաւար և տագնապ պիտի տեսնէ.
և լոյսը անոր ամպերուն մէջ պի-
տի խաւարի։

ԳԼ. Զ

1 Եսայի տեսիլքի մը մէջ Տէրը իր փառքովը տեսնելով՝ 5 կը զարհուրի. բայց Աստուած իր պատգամները տանելու կը ղրկէ զանիկայ։ 9 Կը ցուցընէ ժողովուրդին կուրութիւնը՝ որուն պատճառովը իրենց երկիրը ամայի պիտի մնար, 13 ու կը մարգարէանայ թէ միայն մէկ մնացորդ մը պիտի ազատի։

Իրր 758

1 Ոզիա թագաւորին մեռած տա-
րին Տէրը տեսայ՝ որ բարձր
ու վերցած աթոռի վրայ նստեր
էր. ու անոր քղանցքը տաճարը
2 կը լեցնէր։ Վերի կողմը սերով-
բէները կը կայնէին անոր առջև,
որոնց ամէն մէկը վեց վեց թևեր
ունէին. երկուքով երեսնին կը
ծածկէին, երկուքով ոտքերնին
կը ծածկէին, ու երկուքով կը
3 թռչէին։ Եւ փոփոխակի կ'աղա-
ղակէին ու կ'ըսէին. Սուրբ՝

Ն. Ք. ԳՔ.
Իբր 758

ի Սաղ. ՃԲ. 19։
ղ Եւ. Խ. 34։ Գ Թագ. Ը. 10։
ի Եւ. Դ. 10։ Ղ. 30։ Գործ. Զ. 22։ ԺԳ. 22։ Երեմ. Ա. 6։
է Յայտ. Ը. 8։
Ը Տես Երեմ. Ա. 9։ Դան. Ժ. 16։
Ժ Ծն. Ա. 26։ Դ. 22։ ԺԱ. 7։
Ի Գլ. ԽԴ. 8։ Մատ. ԺԳ. 14։ Մար. Դ. 12։ Ղուկ. Ը. 10։ Յովհ. ԺԲ. 40։ Գործ. ԻԸ. 26։ Հռով. ԺԱ. 8։
Լ Սաղ. ՃԺԹ. 70։ Գլ. ԿԳ. 17։
Խ Երեմ. Ե. 21։
Ծ Միք. Գ. 12։
Կ Դ Թագ. ԻԵ. 21։
Հ Եզր. Թ. 2։ Մաղ. Բ. 15։ Հռով. ԺԱ. 5։

Սուրբ՝ Սուրբ է զօրաց Տէրը, Բո-
լոր երկիրը անոր փառքովը լե-
4 ցուն է ։ Եւ աղաղակողին ձայնէն
սեմերուն հիմերը շարժեցան, ու
5 տունը ծխով լեցուեցաւ ։ Եւ
ըսի. Վա՜յ ինծի, ահա կը կոր-
սուիմ. վասն զի ես պիղծ շրթունք
ունեցող մարդ մըն եմ, ու պղծա-
շուրթն ժողովուրդի մէջ կը բնա-
կիմ, և իմ աչքերս զօրաց Տէրը՝
6 Թագաւորը տեսան ։ Բայց սերով-
բէներուն մէկը դէպ 'ի ինծի թը-
ռաւ, ու ձեռքը կրակի կայծ մը
կար՝ որ Է սեղանէն ունելիքով ա-
7 ռած էր, Ը Եւ բերնիս դպցընելով՝
ըսաւ. Ահա՛ ասիկայ քու շրթունք-
ներուդ դպաւ, ու քու անօրէնու-
թիւնդ վերցաւ, և մեղքիդ քաւու-
թիւն եղաւ ։
8 Ետքը լսեցի Տէրոջը ձայնը, որ
ըսաւ. Ո՞վ խրկեմ, և Ժ մեզի հա-
մար ո՞վ պիտի երթայ. ու ես ըսի.
9 Ահաւասիկ ես, զի՛ս խրկէ ։ Ան
ատենը ըսաւ. Գնա՛, ըսէ աս ժո-
ղովուրդին. Ի Լսելով պիտի լսէք,
բայց պիտի չիմանաք, ու տեսնե-
լով պիտի տեսնէք, բայց պիտի
10 չգիտնաք ։ Աս ժողովուրդին սիր-
տը թանձրացուր, և ականջները
ծանրացո՛ւր, ու անոր աչքերը
գոցէ՛, որ Լ չըլլայ թէ աչքերովը
տեսնէ, ու ականջներովը լսէ, և
սրտովը իմանայ, և դարձի գայ, ու
11 բժշկուի ։ Եւ ես ըսի. Մինչև ե՞րբ,
ո՛վ Տէր իմ. ու ըսաւ. Խ Մինչև որ
քաղաքները՝ բնակիչ չունենալով,
և տուները՝ մարդ չգտնուելով, ա-
մայի մնան, ու երկիրը բոլորովին
12 աւերակ ըլլայ. Ու Ծ մինչև որ Տէրը
հեռացընէ մարդիկը, ու երկրիս
մէջտեղը մեծ ամայութիւն ըլլայ ։
13 Բայց անոր մէջը դեռ տասներորդ
մասը պիտի գտնուի, և ան ալ
դարձեալ պիտի սպառի. ինչպէս
բեւեկնին ու կաղնին կտրուելով՝ ա-
նոնց բունը կը մնայ, անանկ ալ
Կ սուրբ սերունդը՝ ան ժողովուրդին
բունը պիտի ըլլայ ։

## ԳԼ. Է

1 Աքազ՝ Ռասինէն ու Փակէէէն վախնալով կը զարհուրի, սակայն Եսայի կը մխիթարէ զանիկայ ։ 10 Աքազին հրաման կը տրուի նշան մը ընտրելու. բայց երբոր կը մերժէ աս հրամանը, իրեն նշան կը տրուի խոստացուած Մեսիան ։ 17 Մարգարէն կը գուշակէ թէ անոր դատաստանը Ասորեստանին միջոցովը պիտի կատարուի ։

Իբր 742
Ա Դ Թագ. ԺԶ. 5։ Բ Մն. ԻԸ. 5, 6։

1 Եւ եղաւ որ՝ Ա Յուդայի Թագա-
ւորին՝ Ոզիայի որդւոյն Յովա-
թամի որդւոյն Աքազին օրերը, Ա-
սորւոց Ռասին թագաւորը ու Իս-
րայէլի թագաւորը Ռոմելայի որ-
դին Փակէէն՝ Երուսաղեմի վրայ
պատերազմելու ելան, բայց չկրցան
2 անոր հետ պատերազմ ընել ։ Ուստի
երբոր Դաւիթին տանը լուր տը-
րուեցաւ՝ թէ Ասորիք "Եփրեմին
հետ միաբանեցան", անոր սիրտը և
անոր ժողովուրդին սիրտը շարժե-
ցաւ, ինչպէս որ անտառին ծառերը
3 հովէն կը շարժին ։ Բայց Տէրը
Եսայիին ըսաւ. Հիմա դուն ու
քու որդիդ Բ Սէարյասուբ՝ Բ Թա-
փիչի ագարակին ճամբուն վրայ՝
վերի աւազանին ջրմուղին եզերքը
4 ելիր՝ Աքազը դիմաւորելու. Եւ ըսէ
անոր. Զգոյշ եղիր՝ որ հանդարտ
ըլլաս. մի վախնար ու սիրտդ չմա-
րի աս ծուխ հանող երկու կիսայ-
րեաց փայտի ծայրերէն, այսինքն՝
Ռասինի ու Ասորւոց, և Ռոմելայի
որդւոյն սաստիկ բարկութենէն ։
5 Որովհետև Ասորիք, Եփրեմը ու
Ռոմելայի որդին քու վրայովդ չար
6 խորհուրդ ըրին՝ ու ըսին. Յուդա-
յի վրայ երթանք, ու զանիկայ
բռնադատենք, և մեզի նուաճեց-
ընենք. ետքը անոր մէջը Տաբէե-
7 լի որդին թագաւոր դնենք. Եհո-
վայ Տէրը ասանկ կ'ըսէ. Գ Աս խոր-
հուրդը պիտի չհաստատուի ու չկա-
8 տարուի. Վասն զի Դ Ասորւոց գլխ-
ուն գլուխը Դամասկոս, և Դամաս-
կոսի գլուխը Ռասինն է. ու վաթ-
սունուհինգ տարիէն ետքը՝ Եփրե-
մը ժողովուրդ ըլլալէն պիտի ջըն-
9 ջուի ։ Ու Եփրեմին գլուխը Սա-
մարիա, և Սամարիային գլուխը
Ռոմելայի որդին է. Ե Թէ որ չհա-
ւատաք՝ հաստատուն պիտի չըլ-
լաք ։
10 Դարձեալ Տէրը խօսեցաւ Աքա-
11 զին ու ըսաւ. Քու Տէր Աստուծ-
մէդ քեզի համար Զ նշան խնդրէ,
խորութեան մէջ կամ բարձրու-
12 թեան մէ՛ջ խնդրէ ։ Բայց Աքազ
ըսաւ. Չեմ խնդրեր, և Տէրը
13 չեմ փորձեր ։ Ան ատենը անիկայ
ըսաւ. Լսեցէ՛ք հիմա՝ ով Դաւի-
թին տունը. պզտի՞կ բան կ'երե-
նայ ձեզի մարդիկները աշխատցը-
նելնիդ՝ որ իմ Աստուածս ալ պիտի
14 աշխատցընէք ։ Անոր համար Տէրը
ինքը նշան պիտի տայ ձեզի.
Է Ահա՛ կոյսը պիտի յղանայ, ու
Ը որդի պիտի ծնանի, և Թ անոր ա-
նունը Ժ Էմմանուէլ պիտի կոչէ ։
15 Անիկայ կոգի ու մեղր պիտի ուտէ,
մինչև որ գիտնայ չարը մերժել
16 ու բարին ընտրել ։ Վասն զի
տղան Ի չարը մերժելը ու բարին
ընտրելը գիտնալէն առաջ, Լ պի-
տի թողուի ան երկիրը՝ որուն
երկու թագաւորներէն դուն կը
17 "վախնաս" ։ Խ Տէրը քու վրադ, ու
քու ժողովուրդիդ վրայ, և քու

Ն. Ք. ԳՔ.
Իբր 742

Կամ՝ Եփրեմի երկիրը վրայ բանակեցան.
Բ Յն. Մնացորդը պիտի դառնայ։ Տես Գլ. Ժ. 21։
Բ Դ Թագ. ԺԸ. 17։ Գլ. ԼԶ. 2։
Գ Առակ. ԻԱ. 30։ Գլ. Ը. 10։
Դ Տես Բ Թագ. Ը. 6։
Ե Բ Մն. Ի. 20։
Զ Դատ. Զ. 36, 39։ Մատ. ԺԲ. 38։
Է Մատ. Ա. 23։ Ղուկ. Ա. 31, 34։
Ը Գլ. Թ. 6։
Թ Տես Ծն. Դ. 1, 25։ ԺԶ. 11։ ԻԹ. 32։ Լ. 6, 8։ Ա Թագ. Դ. 21։
Ժ Գլ. Ը. 8։
Ի Տես Գլ. Ը. 4։
Լ Կամ՝ Քու գզուած երկիրդ՝ իր երկու թագաւորներէն պիտի թողուի ։ Տես Դ Թագ. ԺԵ. 30։ ԺԶ. 9։
Խ Բ Մն. ԻԸ. 19։

Ն. Ք. ԴԲ. իրր 742

հօրդ տանը վրայ անանկ օրեր պիտի
բերէ, որ ᵇ Եփրեմը Յուդայէն
զատուած օրէն 'ի վեր չեկան, այսինքն՝ Ասորեստանի թագաւորը ։
18 Եւ պիտի ըլլայ ան օրը՝ որ Տէրը
պիտի ᶜ սուլէ Եգիպտոսի գետերուն
ծայրը եղած ճանճերուն, ու Ասորեստանի երկրին մէջ եղած մեղուներուն ։
19 ներուն ։ Եւ ամէնը պիտի գան ու
պիտի հանգչին ամայի ձորերուն
մէջը, ու ᵈ վէմերուն խոռոչներուն
մէջը, և ամէն թուփերուն ու ամէն
20 արօտներուն մէջը ։ Ան օրը Տէրը՝
ᵉ վարձքով առնուած ածելիով՝
այսինքն Գետին անդիի կողմը եղող
Ասորեստանի թագաւորով գլուխը
ու ոտքերուն մազը պիտի ածիլէ,
և մօրուքն ալ բոլորովին պիտի
21 սափրէ ։ Ու պիտի ըլլայ ան օրը՝ որ
մարդ մը՝ մէկ երինջ ու երկու ոչ-
22 խար պահելով, Անոնց տուած կաթին առատութենէն կոգի պիտի
ուտէ ։ վասն զի երկրին մէջ բոլոր
մնացողները կոգի ու մեղր պիտի
23 ուտեն ։ Եւ պիտի ըլլայ ան օրը՝
ուր որ հազար որթ տնկուած է հազար սիկղ արծաթի արժէքով՝ ᶠ ցախերով ու փուշերով պիտի լեցուի ։
24 Նետերով ու աղեղներով հոն պիտի գան. ինչու որ բոլոր երկիրը
ցախերով ու փուշերով պիտի լե-
25 ցուի ։ Եւ ան ամէն լեռները՝ որ
բրիչով կը փորուէին, ցախի ու
փուշի երկիւղին պատճառաւը հոն
պիտի չերթաք ։ արջառներուն արօտ ու ոչխարներուն կոխան պիտի ըլլան ։

ᵇ Գ Թագ. ԺԲ. 16 ։ ᶜ Գլ. Ե. 26 ։ ᵈ Գլ. Բ. 19 ։ Երեմ. ԺԶ. 16 ։ ᵉ Դ Թագ. ԺԶ. 7, 8 ։ Բ Մն. ԻԸ. 20, 21 ։ Տես Եզեկ. Ե. 1 ։ ᶠ Գլ. Ե. 6 ։

## ԳԼ. Ը

1 Մահէր շալալ հաշ պազ անունին նշանակութեանը համեմատ՝ Եսային կը մարգարէանայ թէ Ասորեստանեայք պիտի տիրեն Ասորւոց և Իսրայէլի վրայ, 5 նոյնպէս ալ Յուդայեանց վրայ՝ իրենց անհաւատութեանը համար. 9 կը ցուցընէ թէ անկարելի է Աստուծոյ դատաստաններուն դէմ կենալ. 11 և թէ Աստուծմէ վախցողները պիտի մխիթարուին, 19 ու կռապաշտները մեծ նեղութիւն պիտի կրեն ։

1 Ու Տէրը ինծի ըսաւ. Դուն քեզի մեծ տոմս մը առ, և անոր
վրայ մարդու գրիչով ᵃ գրէ՛ Մահէր
2 շալալ հաշ պազին վրայով ։ Եւ
ինծի հաւատարիմ վկաներ բռնեցի՝
ᵇ Ուրիա քահանան ու Բարաքիայի
3 որդին Զաքարիան ։ Եւ մերձեցայ
մարգարէուհիին, ու անիկայ յղացաւ, ու որդի մը ծնաւ. և Տէրը
ինծի ըսաւ. Անոր անունը *Մա-
4 հէր շալալ հաշ պազ դիր. Ինչու
որ դեռ տղան՝ ᶜ հայրս և մայրս
կանչելը չսորված՝ ᵈ Դամասկոսին
հարստութիւնները ու Սամարիային աւարը Ասորեստանի թագաւորին առջևը պիտի տարուի ։

ᵃ Գլ. Լ. 8 ։ Ամբ. Բ. 2 ։ ᵇ Դ Թագ. ԺԶ. 10 ։ * Այս՝ սրտոտելով աւարառուէ՛ ու շուտով կողոպտէ՛ ժողվէ ։ ᶜ Տես Գլ. Է. 16 ։ ᵈ Դ Թագ. ԺԶ. 29 ։ ԺԶ. 9 ։ Գլ. ԺԷ. 3 ։

Ն. Ք. ԴԲ. իրր 741

5 Եւ դարձեալ Տէրը ինծի խօսե-
6 ցաւ ու ըսաւ. Որովհետև աս ժողովուրդը ᵉ Սիլովայի հանդարտ
վազող ջուրերը կ'արհամարհէ, և
ᶠ Ռասինին ու Ռովմելայի որդւոյն
7 կը հաւնի, Անոր համար ահա Տէրը
անոնց վրայ Գետին զօրաւոր ու առատ ջուրերը այսինքն ᵍ Ասորեստանի թագաւորը, ու անոր բոլոր
զօրութիւնը պիտի հանէ. և անիկայ իր ամէն յատակներէն վեր պիտի ելլէ, ու իր բոլոր եզերքներուն
8 վրայէն պիտի քալէ ։ Եւ Յուդայի
մէջ յորդելով՝ պիտի անցնի երթայ, ու ʰ մինչև մարդուս պարանոցը
պիտի հասնի, և անոր թևերուն
տարածութիւնը՝ քու երկրիդ լայնութիւնը պիտի լեցընէ, ով ⁱ Էմմանուէլ ։
9 ʲ Ո՛վ ժողովուրդներ՝ † դաշնակից
եղէք", բայց պիտի խորտակուիք.
ո՛վ երկրին հեռաւոր տեղերը՝ ականջ դրէք. ‡ պատրաստուեցէ՛ք,
բայց պիտի խորտակուիք. ‡ պատրաստուեցէ՛ք, բայց պիտի խորտա-
10 կուիք. ᵏ Խորհուրդ ըրէք, բայց
պիտի խափանուի. խօսք խօսեցէք, բայց ˡ պիտի չհաստատուի.
քանզի ᵐ Աստուած մեզի հետ է ։
11 Քանզի Տէրը հզօր ձեռքով այսպէս
խօսեցաւ ինծի, ու խրատեց զիս՝
թէ պէտք չէ աս ժողովուրդին
ճամբուն մէջը քալել, ըսելով.
12 ⁿ Դաշնակցութիւն մի՛ ըսէք, ինչ
բանի որ աս ժողովուրդը դաշնակցութիւն կ'ըսէ. և ᵒ անոր վախովը
մի՛ վախնաք, ու մի՛ զարհուրիք.
13 Միայն զօրաց Տէրը ᵖ ‖ փառաւորեցէք. ᵠ անիկայ ըլլայ ձեր վախը և
14 ձեր զարհուրանքը. Եւ ʳ անիկայ
սրբարան պիտի ըլլայ. բայց
Իսրայէլի երկու տուներուն՝ ˢ գայթակղութեան քար և գլորելու
վէմ, ու Երուսաղէմի բնակիչներուն՝ թակարդ ու որոգայթ պիտի
15 ըլլայ ։ Եւ անոնցմէ շատերը ᵗ պիտի գլորին, ու իյնալով պիտի խորտակուին, ու որոգայթի մէջ իյ-
16 նալով պիտի բռնուին ։ Վկայութիւնը կապէ, աշակերտներուս
մէջ օրէնքը կնքէ ։
17 Ուրեմն ես պիտի սպասեմ Տէրոջը՝ որ ᵘ Յակոբին տունէն իր երեսը ծածկեր է, ու ᵛ անոր պիտի
18 յուսամ ։ ʷ Ահաւասիկ ես ու ան
զաւակները՝ որ Տէրը ինծի տուաւ,
ˣ նշաններ ու սքանչելիքներ ըլլալու
Իսրայէլի մէջ, Սիօն լեռը բնակող
զօրաց Տէրոջը կողմանէ ։
19 Ու երբոր ձեզի ըսեն թէ՝ ʸ չչնչող
ու քրթմնջող ᶻ վհուկներուն և նշանագէտներուն հարցուցէք, այսինքն՝ ըսէ՛ թէ, ժողովուրդը իր

ᵉ Նեեմ. Գ. 15 ։ Յովհ. Թ. 7 ։ ᶠ Գլ. Է. 1, 2, 6 ։ ᵍ Գլ. Ժ. 12 ։ ʰ Գլ. Լ. 28 ։ ⁱ Գլ. Է. 14 ։ ʲ Յովել. Գ. 9, 11 ։ † Կամ՝ ցրնծութի՛ւն ըրէք ։ ‡ Եբր. Գօտի՛ կապեցէք ։ ᵏ Յոբ. Ե. 12 ։ ˡ Գլ. Է. 7 ։ ᵐ Գլ. Է. 14 ։ Գոր. Ե. 38, 39 ։ Հռով. Ը. 31 ։ ⁿ Գլ. Է. 2 ։ ᵒ Ա Պետ. Գ. 14, 15 ։ ᵖ Թուոց. Ի. 12 ։ ‖ Եբր. սրբեցէ՛ք ։ ᵠ Սաղ. ՀԶ. 7 ։ Ղուկ. ԺԲ. 5 ։ ʳ Եզեկ. ԺԱ. 16 ։ ˢ Գլ. ԻԸ. 16 ։ Ղուկ. Բ. 34 ։ Հռով. Թ. 33 ։ Ա Պետ. Բ. 8 ։ ᵗ Մատ. ԻԱ. 44 ։ Ղուկ. Ի. 18 ։ Հռով. Թ. 32 ։ ԺԱ. 25 ։ ᵘ Գլ. ԾԴ. 8 ։ ᵛ Ամբ. Բ. 8 ։ Ղուկ. Բ. 25, 38 ։ ʷ Եբր. Բ. 13 ։ ˣ Սաղ. ՀԱ. 7 ։ Զաք. Գ. 8 ։ ʸ Գլ. ԻԹ. 4 ։

իրր 741

ᶻ Ա Թագ. ԻԸ. 8 ։ Գլ. ԺԹ. 3 ։

Ն․ Ք․ ԶՔ․
Իրր 741
ԸՍաղ․ ճզ․ 28։
ԹՂու․ Ժզ․ 29։
ԺՄիք․ Գ․ 6։
ՀՅայտ․ Ժզ․ 11։
ԹԳլ․ Ե․30։
ԲԳլ․ Թ․1։

Աստուծոյն պիտի չհարցընէ՞, կեն-
դանիներուն համար՝ մեռածնե-
20 րուն պէտք հարցընէ ։ Օրէնքին
ու վկայութեանը պէտք հարցընեն․
թէ որ աս խօսքիս համեմատ
չխօսին, անոնք ամենևին լոյս
21 չունին ։ Եւ ժողովուրդը վիշտ ու
սով կրելով պիտի անցնի անկէ․
ու երբոր անօթենայ՝ պիտի բար-
կանայ, ու իր թագաւորին և իր
Աստուծոյն Ճպիտի հայհոյէ, ու
22 վեր նայի․ Եւ դէպ ՚ի երկիրը պի-
տի նայի, և ահա վիշտ ու Բխա-
ւար, նեղութեան մէգ ու թանձր
մառախուղ ։

---

## ԳԼ․ Թ

1 Նեղութեան ատենները ի՛նչ ուրախութիւն պիտի պատճառէ Քրիստոսի թագաւորութիւնը ու ծնունդը ։ 8 Իսրայէլացւոց վրայ գալու դատաստանները՝ իրենց ամբարտաւանութեանը համար, 13 իրենց կեղծաւորութեանը համար, 18 ու իրենց անզեղջ մնալուն համար ։

Իրր 740
ԱԴւ․ Ը․22։
Իրր 771
ԲԲ Թագ․ ԺԵ․29։ Բ Մն․ Ժզ․4։
Իրր 740
ԳՄատ․ Դ․ 16։ Եփե․ Ե․8․14։
ԴԴատ․ Ե․ 30։
ԵԴատ․ Է․ 22։ Սաղ․ Ձդ․9։ Գլ․ Ժ․26։
ԶԳլ․ Ժ․5։ Ժդ․5։
*Կամ՝ սրունապանները
ԷԳլ․ Է․14։ Ղու․ Բ․ 11։
ԸՅոհ․ Գ․ 16։
ԹՄատ․ Իը․ 18։ ա Կոր․ ԺԵ․25։
ԺԴատ․ Ժգ․ 18։
ԻՏիտ․ Բ․ 13։
ԼԵփե․ Բ․ 14։
ԽԴան․ Բ․ 44։ Ղու․ Ա․ 32․33։

1 Բայց անոնց Ախաւար պիտի չըլ-
լայ, ինչպէս նեղութեան ժա-
մանակը, երբոր Բառաջի ատենը ա-
նարգեց Զաբուղոնի երկիրը ու
Նեփթաղիմի երկիրը․ հապա վեր-
ջին ատենը պիտի պատուէ ծովուն
ճամբան, Յորդանանու անդիի
կողմը՝ հեթանոսաց Գալիլեան ։
2 ԳԽաւարի մէջ պտըտող ժողովուր-
դը մեծ լոյս տեսաւ, մահուան
ստուերին՝ երկիրը բնակողներուն
3 լոյս ծագեցաւ ։ Ազգը շատցու-
ցիր, անոր ուրախութիւնը մեծ-
ցուցիր․ անոնք քու առջիդ կ՚ու-
րախանան, հունձքի ատենի ուրա-
խութեան պէս, ինչպէս կը ցնծան
4 անոնք որ Դաւար կը բաժնեն ։ Ին-
չու որ ԵՄադիամին օրուանը պէս՝
անոր ծանր լուծը ու կռնակին
Զգաւազանը, և անոր վրայ բռ-
նութիւն ընողին գաւազանը կոտ-
5 րեցիր ։ Քանզի շառաչինով պա-
տերազմողներուն ամէն *զէնքերը
և արիւնաթաթախ հանդերձները
պիտի այրին և հրոյ ճարակ ըլլան ։
6 Վասն զի Էմեզի Մանուկ մը
ծնաւ, մեզի Զորդի մը տրուեցաւ․
և Թիշխանութիւնը անոր ուսին
վրայ պիտի ըլլայ, ու անոր անունը
պիտի կոչուի՝ ԺՍքանչելի, Խորհըր-
դակից, ԻՀզօր Աստուած, Յաւի-
տենականութեան Հայր, ԼԽաղա-
7 ղութեան Իշխան ։ Դաւիթին ա-
թոռին վրայ ու անոր թագաւո-
րութեանը վրայ, անոր իշխանու-
թեանը մեծնալուն ու խաղաղու-
թեանը Խսահման չկայ, որ հիմա-
կուընէ մինչև յաւիտեան իրաւուն-
քով ու արդարութիւնով հաստա-
տէ և զօրացընէ զանիկայ ։ ԾԶօ-
րաց Տէրոջը նախանձը պիտի ընէ
ասիկայ ։
8 Տէրը Յակոբին պատգամ խըր-
կեց, ու անիկայ Իսրայէլին վրայ
9 իջաւ ։ Եւ բոլոր ժողովուրդը պի-
տի իմանայ, այսինքն՝ Եփրեմը ու
Սամարիայի բնակիչները, որոնք
ամբարտաւանութեամբ և սրտի
10 հպարտութեամբ կ՚ըսեն․ Թուխ-
աղիւսները ինկան, բայց մենք տա-
շուած քարերով պիտի շինենք․
մոլաթզենիները կտրուեցան, բայց
մենք անոնց տեղը եղևնափայտեր
11 պիտի դնենք ։ Սակայն Տէրը անոր
վրայ Ռասինին հակառակորդները
պիտի յարուցանէ, ու անոր թըշ-
12 նամիները պիտի †գրգռէ ։ Ասո-
րիները ‡արևելքէն, Փղշտացիները
‖արևմուտքէն․ ու անոնք լեցուն
բերանով Իսրայէլը պիտի ուտեն ։
ԿԱյսու ամենայնիւ անոր բարկու-
թիւնը չիջաւ, հապա անոր ձեռքը
տակաւին երկընցած է ։
13 Քանզի Հժողովուրդը զինքը զար-
նողին չդառնար, ու զօրաց Տէրը
14 չփնտռեր ։ Եւ Տէրը Իսրայէլէն
գլուխը ու պոչը՝ արմաւենիին ոստը
ու կնիւնը՝ ՁՄէկ օրուան մէջ պիտի
15 կտրէ ։ (Ծերը ու պատուաւոր
մարդը գլուխն է․ և ստութիւն
16 սորվեցընող մարգարէն պոչն է ։) Ու
աս ժողովուրդին Ղառաջնորդները
կը մոլորեցընեն զանոնք, և անոնցմէ
առաջնորդուածները պիտի կըլ-
17 լուին ։ Աս պատճառաւ Տէրը անոր
երիտասարդներուն Ճպիտի չհաճի, և
անոր որբերուն ու որբևարիներուն
պիտի չողորմի․ վասն զի Մամէնքն
ալ կեղծաւոր ու չարագործ եղան,
և ամէն բերան անզգամութիւն կը
խօսի ։ ՅԱյսու ամենայնիւ անոր
բարկութիւնը չիջաւ, հապա անոր
ձեռքը տակաւին երկընցած է ։
18 Քանզի Նանօրէնութիւնը կրակի
պէս կ՚այրէ․ ցախերը ու փուշերը
կը սպառէ․ անտառին թանձրա-
խիտ ծառերը կ՚այրէ․ ու անոնք
կը ցնդին վեր ելլող ծուխի պէս ։
19 Զօրաց Տէրոջը բարկութենէն եր-
կիրը պիտի §այրի, ու ժողովուրդը
հրոյ ճարակ եղածի պէս պիտի ըլ-
լայ․ Շմարդ իր եղբօրը պիտի չը-
20 խնայէ ։ Եւ աջ կողմը եղածը պիտի
յափշտակէ, ու անօթի պիտի մը-
նայ, և ձախ կողմինն ալ պիտի
ուտէ, Ոու չկշտանայ․ Չամէն
մարդ իր բազուկներուն միսը պիտի
21 ուտէ ։ Մանասէն Եփրեմը պիտի
ուտէ, ու Եփրեմը Մանասէն․ և
անոնք մէկտեղ Յուդայի վրայ պիտի
յարձակին ։ ՊԱյսու ամենայնիւ ա-
նոր բարկութիւնը չիջաւ, հապա

Ն․ Ք․ ԶՔ
Իրր 741
ԾԴ Թագ․ ԺԹ․ 31։ Գլ․ ԼԷ․32։
Իրր 738
†Կամ՝ սպառազինէ։
‡Եբր․ առջևէն,
‖Եբր․ ետևէն․
ԿԳլ․ Ե․25։ Ժ․4։ Երեմ․ Դ․8։
ՀԵրեմ․ Ե․ 8։ Ովս․ Է․ 10։
ՁԳլ․ Ժ․17։ Յայտ․ ԺԸ․ 8։
ՂԳլ․ Գ․12։
ՃՍաղ․ ճխէ․ 10․11։
ՄՄիք․ Է․ 2։
ՅՀմր 12․21։ Գլ․ Ե․25։ Ժ․4։
ՆԳլ․ Ժ․17։ Մաղ․ Դ․1։
§Կամ՝ խաւարի․
ՇՄիք․ Է․ 2․6։
ՈՂև․ Իզ․ 26։
ՉԳլ․ ԽԹ․ 26։ Երեմ․ ԺԹ․9։
ՊՀմր 12․17։ Գլ․ Ե․25։ Ժ․4։

Ն. Ք. ԴՓ.
ԻԸԸ 738

անոր ձեռքը տակաւին երկընցած
է ։

ԳԼ. Ժ

1 Մարգարէն բռնաւորներուն համար վա՜յ կը կարդայ ։ 5 Ասորեստան կեղծաւորներուն գաւազանը ըլլալով, իր ամբարտաւանութեանը համար պիտի կոտրուի ։ 20 Իսրայէլին մէկ մնացորդը պիտի ազատուի ։ 24 Իսրայէլ կը մխիթարուի՝ Ասորեստանէն ազատուելու խոստմունքով ։

ԻԸԸ 713
ա Սաղ. ԾԸ. 2 ։ ՂԴ. 20 ։

1 Վա՜յ անոնց՝ որ ա անօրէնութեան
կանոններ կը սահմանեն, և ան
դպիրներուն՝ որ անիրաւութիւն կը
2 գրեն, Որ աղքատներուն դատաս-
տանը խոտորեն, ու իմ ժողովուրդիս
տնանկներուն իրաւունքը յափշտակեն.
որ որբևարիները իրենց
աւար ըլլան, ու որբերը կողոպտեն ։

բ Յոբ. ԼԱ. 14 ։
գ Ովս. Թ. 7 ։ Ղու. ԺԹ. 44 ։

3 Ուրեմն բ ի՞նչ պիտի ընէք գ այցե-
լութեան օրը, և հեռուանց գալու
կործանման ատենը. օգնութեան
համար որո՞ւն պիտի դիմէք, ու ձեր
4 փառքը ո՞ւր պիտի թողուք ։ Ա-
ռանց ինծի՝ գերիներուն *մէջ պիտի
ծռին, ու սպաննուածներուն *մէջ
պիտի իյնան ։ դ Այսու ամենայնիւ
անոր բարկութիւնը չիջաւ, հապա
անոր ձեռքը տակաւին երկընցած
է ։

* Եբր. տա-կը
դ Գլ. Ե. 25 ։ Թ. 12, 17, 21 ։

5 Վա՜յ Ասորեստանի թագաւորին՝ որ
ե իմ բարկութեանս գաւազանն է-
ղաւ. որուն ձեռքի ցուպը իմ
6 սրտմտութիւնս է ։ Զանիկայ
զ կեղծաւոր ազգի մը վրայ պիտի
խրկեմ, ու իմ սրդողած ժողովուրդիս
դէմ է հրաման պիտի տամ ա-
նոր, որ աւար ժողվէ ու յափշտա-
կութիւն ընէ, և զանոնք փողոց-
ներուն ցեխին պէս կոխկռտէ ։

ե Երեմ. ԾԱ. 20 ։
զ Գլ. Թ. 17 ։
է Երեմ. ԼԴ. 22 ։

7 Բայց ը անիկայ այնպէս չմտածեր,
ու սրտովը այնպէս չխորհիր. հա-
պա իր միտքը դրեր է որ կորսնցը-
նէ, և շատ ազգեր բնաջինջ ընէ ։
8 թ Վասն զի կ'ըսէ. Միթէ իմ իշ-
խաններս՝ ամէնքն ալ թագաւորներ
9 չե՞ն. ժ Քաղանէն՝ ի Քարքամիսին
պէս չէ՞. Եմաթը՝ Արբաթին պէս
չէ՞. Սամարիան՝ ւ Դամասկոսին
10 պէս չէ՞, Ինչպէս որ իմ ձեռքս
տիրեց կռապաշտ թագաւորու-
թիւններուն, որոնց կուռքերը Ե-
րուսաղեմի ու Սամարիայի կուռքե-
11 րէն շատ էին, Միթէ Սամարիային
ու անոր կուռքերուն ըրածիս պէս,
Երուսաղեմին ու անոր կուռքերուն
12 ալ այնպէս պիտի չընե՞մ ։ Ու երբ-
որ Տէրը՝ ի Սիոն լեռանը վրայ ու
Երուսաղեմի մէջ իր ամէն գործքը
կատարէ, ծ Ասորեստանի թագա-
ւորին հպարտացած սրտին պտուղը՝
և անոր ամբարտաւան աչքերուն
13 փառքը պիտի քննեմ ։ Քանզի կա-
նիկայ կ'ըսէ. Ես իմ ձեռքիս ուժո-

ը Ծն. Ծ. 20 ։ Միք. Դ. 12 ։
թ Դ Թագ. ԺԸ. 24, 33 ։ ԺԹ. 10 ։
ժ Ամով. Զ. 2 ։
ի Բ Մն. ԼԵ. 20 ։
լ Դ Թագ. ԺԶ. 9 ։
խ Դ Թագ. ԺԹ. 31 ։
ծ Երեմ. Ծ. 18 ։
կ Գլ. ԼԷ. 24 ։ Եզեկ. ԻԸ. 4 ։ Դան. Դ. 30 ։

վը ու իմ իմաստութեամբս ըրի
զայդ, որովհետև ես խելացի եմ.
և ազգերուն սահմանները վերցու-
ցի, ու անոնց գանձերը յափշտա-
կեցի. և զօրաւորի պէս՝ բնակիչ-
14 ները նուաճեցի ։ Ու հ իմ ձեռքս՝
ժողովուրդոց ստացուածքը՝ բոյնի
պէս գտաւ. և բոլոր երկիրը ժող-
վեցի, ինչպէս որ մէկը կը ժողվէ
թողուած հաւկիթները. ու թև
շարժող, կամ բերան բացող,
15 կամ ճիկ հանող մը չեղաւ ։ Մի-
թէ յ տապարը՝ իրմով կտրող մար-
դուն դէմ կը գոռոզանա՞յ. կամ
սղոցը՝ զինքը գործածողին դէմ կը
հպարտանա՞յ. ասիկա այնպէս է՝
որպէս թէ գաւազանը զինքը վեր-
ցընողին դէմ շարժէր, և ցուպը՝
զինքը բարձրացընէր՝ թէ փայտ չէ ։
16 Անոր համար Տէրը՝ զօրաց Տէրը ա-
նոր գէր մարդիկներուն նիհարու-
թիւն պիտի խրկէ. ու անոր փառ-
քին տակը հրդեհ մը պիտի վառէ
17 բոցավառ հրդեհի պէս ։ Եւ Իսրա-
յէլին Լոյսը կրակ՝ ու անոր Սուր-
բը բոց պիտի ըլլայ. և մէկ օրուան
մէջ ղ անոր փուշերը ու ցախերը այ-
18 րելով պիտի սպառէ. Եւ անոր
անտառին ու ճ բարեբեր ագարակին
փառքը՝ հոգին ու մարմինը պիտի
հատցընէ. և † մարող հիւանդի՝ պէս
19 պիտի ըլլայ ։ Ու անոր անտառին
մնացած ծառերը քիչ պիտի ըլլան,
այնպէս որ՝ մէկ տղայ մը կարենայ
զանոնք գրել ։
20 Եւ պիտի ըլլայ ան օրը՝ որ Իս-
րայէլին մնացորդը ու Յակոբին
տանը ազատուածները՝ մէյմըն ալ
պիտի մ չապաւինին զիրենք զարնո-
ղին. հապա ճշմարտութեամբ Տէ-
րոջը՝ Իսրայէլի Սուրբին պիտի ա-
21 պաւինին ։ յ Մնացորդը՝ Յակոբին
մնացորդը Հզօր Աստուծոյն պիտի
22 դառնայ ։ Վասն զի ն թէու ժողո-
վուրդդ՝ ով Իսրայէլ, թէև ծովու
աւազին չափ ըլլայ, անոնցմէ ւ մնա-
ցորդ մը միայն պիտի դառնայ.
շ Նախասահմանեալ աւերումը ար-
դարութեամբ պիտի յարձակի ։
23 ւ Քանզի զօրաց Եհովայ Տէրը՝ բոլոր
երկրին մէջ նախասահմանեալ աւե-
24 րումը 'ի գործ պիտի դնէ ։ Անոր
համար զօրաց Եհովայ Տէրը այսպէս
կ'ըսէ. Ո՛վ Սիոնի մէջ բնակող
ժողովուրդս՝ պ Ասորեստանցիէն մի՛
վախնար. անիկայ քեզ գաւազա-
նով պիտի զարնէ և իր ցուպը
քու վրադ պիտի վերցընէ՝ ջ ‡ Ե-
25 գիպտացւոց կերպովը՝ Բայց շատ
ռ քիչ ժամանակի մէջ ս մ բարկու-
թիւնս պիտի դադարի ու իմ
սրտմտութիւնս անոնց կորստեանը
26 պիտի դառնայ ։ Եւ զօրաց Տէրը

Ն. Ք. ԴՓ.
ԻԸԸ 713

հ Յոբ. ԼԱ. 25 ։
յ Երեմ. ԾԱ. 20 ։
ղ Գլ. Թ. 18 ։ ԻԵ. 4 ։
ճ Դ Թագ. ԺԹ. 23 ։
† Կամ՝ դրօշակիրի մարելուն
մ Տես Դ Թագ. ԺԶ. 7 ։ Բ Մն. ԻԸ. 20 ։
յ Տես Գլ. Է. 3 ։
ն Հռով. Թ. 27 ։
ւ Գլ. Զ. 13 ։
շ Գլ. ԻԸ. 22 ։
ւ Գլ. ԻԸ. 22 ։ Դան. Թ. 27 ։ Հռով. Թ. 28 ։
պ Գլ. ԼԷ. 6 ։
ջ Ել. ԺԴ ։
‡ Կամ՝ Եգիպտոսի ճամբուն մէջ՝
ռ Գլ. ԾԴ. 7 ։
ս Դան. ԺԱ. 36 ։

Ն․ Ք․ ԶՓ․ Իբր 713

Լ՝ Դ Թագ․ ԺԹ․ 35։
Փ Դատ․ Է․ 25։ Գլ․ Թ․ 4։
Ր Ել․ Ժ Դ․ 26․ 27։
Յ Գլ․ ԺԴ․ 25։
* Կամ՝ օծման
– Ա Թագ․ ԺԳ․ 23։
÷ Ա Թագ․ ԺԱ․ 4։
+ Ա Թագ․ ԻԵ․ 44։
։ Դատ․ ԺԸ․ 7։
† Կամ՝ պատասխան տուր՝ ո՛վ Ընաթոթ։
‡ Յես․ ԻԱ․ 18։
= Ա Թագ․ ԻԱ․ 1։ ԻԲ․ 19։ Նեեմ․ ԺԱ․ 32։
Ꝑ Գլ․ ԼԵ․ 22։
‡ Գլ․ ԺԴ․ 2։
Ͳ Տես Ամով․ Բ․ 9։

Հանոր վրայ մէկ խարազան մը պի-
տի վերցընէ , Ͳ Օրեբի վէմին քովը
Մադիամու հարուածին պէս . ու իր
գաւազանը ծովուն վրայ պիտի
վերցընէ , ր ինչպէս որ ըրաւ Եգիպ-
27 տոսի մէջ ։ Եւ պիտի ըլլայ այն
օրը՝ որ յ անոր բեռը քու կռնակէդ ,
ու անոր լուծը քու պարանոցէդ
պիտի վերնայ . և լուծը *գիրու-
թեան պատճառով պիտի կոտրի ։
28 Անգէ ‡ուղուց եկաւ , Մագրոն
անցաւ , ու իր կահ կարասիքը
29 Մաքմասի մէջ տեղաւորեց ։ –Անց-
քէն անցան . Գաբայի մէջ իջեւան
ըրին . Ռամա վախցաւ . ÷Սաւուղի
30 Գաբաան փախաւ ։ Ո՛վ +Գաղ-
ղիմի աղջիկը՝ ձայնդ վերցո՛ւր , ։Լա-
յիսին լսե՛լ տուր՝ †ո՛վ խեղճ ‡Անա-
31 թովթ” ։ Մադմենա հեռացաւ ,
32 Գեբիմի բնակիչները փախան . Ցա-
կաւին այսօր =Նոբի մէջ պիտի կե-
նայ , դէպ 'ի Ꝑ Սիօնի աղջկան լեռը ,
Երուսաղէմի բլուրը ‡ձեռքը պիտի
շարժէ ։
33 Ահա՛ զօրաց Տէր Եհովան ահաւոր
զօրութեամբ գեղեցիկ ոստերը պի-
տի կտրէ . և Ͳ բարձրահասակները
պիտի կտրուին , ու բարձրերը պի-
34 տի ցածնան ։ Եւ Անիկայ անտա-
ռին խիտ ծառերը երկաթով պի-
տի կտրէ . ու Լիբանանը Հզօրին
ձեռքովը պիտի իյնայ ։

ԳԼ․ ԺԱ

1 Յեսսէի արմատէն ելած ընձիւղին խաղաղ
թագաւորութիւնը ։ 10 Ցաղթանակով Իսրա-
յէլին դարձը , ու հեթանոսաց կոչումը ։

– Հմր 10։ Գոր․ ԺԳ․ 23։
Ꝑ Գլ․ Դ․ 2։ ԾԳ․ 2։ Երեմ․ ԻԴ․ 5։ Զաք․ Զ․ 12։ Յայտ․ Ե․ 5։
‡ Գլ․ ԿԱ․ 1։ Մատ․ Գ․ 16։ Յով․ Ա․ 32։ 33։ Գ․ 34։
‡ Կամ՝ ուրախանայ ․
Ͳ Սաղ․ ՀԲ․ 2։ 4։ Յայտ․ ԺԹ․ 11։
Ի Յոբ․ Դ․ 9։ Մաղ․ Դ․ 6։ Բ Թես․ Բ․ 8։ Յայտ․ Ա․ 16։ Բ․ 16։ ԺԹ․ 15։
Ղ Տես Եփե․ Զ․ 14։
Ի Գլ․ ԿԵ․ 25։ Եզեկ․ ԼԴ․ 25։ Ովս․ Բ․ 18։

1 Եւ –Յեսսէին բունէն Ꝑշառաւիղ
պիտի ելլէ , և անոր արմատէն
2 ընձիւղ պիտի բուսնի . Ու ‡անոր
վրայ պիտի հանգչի Տէրոջը Հոգին ,
իմաստութեան ու հանճարի Հո-
գին , խորհուրդի ու զօրութեան
Հոգին , գիտութեան և Աստուծոյ
3 վախին Հոգին ։ Ու անիկայ Տէ-
րոջը վախովը պիտի ‡լեցուի . և իր
աչքերուն տեսածին համեմատ պի-
տի չդատէ , ու իր ականջներուն
լսածին համեմատ պիտի չյանդի-
4 մանէ . Ͳ Հապա աղքատին դատը
արդարութեամբ պիտի տեսնէ , ու
երկրին զրկուածներուն համար՝ ի-
րաւամբ պիտի յանդիմանէ . և Ի իր
բերնին գաւազանովը երկիրը պի-
տի զարնէ , ու իր շրթունքնե-
րուն հոգիովը ամբարիշտը պիտի
5 մեռցընէ ։ Եւ իր Ղմէջքի գօտին՝
արդարութիւն , ու իր երիկա-
մունքներուն գօտին՝ հաւատար-
6 մութիւն պիտի ըլլայ ։ Եւ Իգայլը
գառին հետ պիտի բնակի , ու ինձը
ուլին հետ պիտի պառկի . և որթը ,
ու առոյգ առիւծը , և պարարտ

զուարակը մէկտեղ պէտք ապրին .
ու զանոնք մէկ պզտիկ տղայ մը
7 պիտի քշէ ։ Եւ կովը արջին հետ
պիտի ճարակի . անոնց ձագերը
մէկտեղ պիտի պառկին . և առիւ-
ծը արջառի պէս յարդ պիտի ուտէ ։
8 Ու կաթնկեր տղան՝ իժին ծակին
վրայ պիտի խաղայ , և կաթէն
կտրուածը՝ ձեռքը քարբին բոյնին
9 վրայ պիտի դնէ ։ Անոնք Լ պիտի
չվնասեն ու չապականեն իմ բոլոր
սուրբ լեռանս վրայ . քանզի Ր եր-
կիրը Տէրոջը գիտութեամբը պիտի
լեցուի , ինչպէս որ ջուրերը ծովը
10 կը ծածկեն ։ Եւ ժ այն օրը Ի Յես-
սէին մէկ արմատը պիտի ըլլայ , որ
պիտի կայնի ժողովրդոց դրօշակ
ըլլալու համար . Լ զանիկայ ազգերը
պիտի փնտռեն , ու Ի անոր հանգիս-
11 տը փառաւոր պիտի ըլլայ ։ Եւ այն
օրը պիտի ըլլայ որ Տէրը նորէն իր
ձեռքը պիտի երկընցընէ , որ Ճ Ա-
սորեստանէն , Եգիպտոսէն , Պա-
թուրեսէն , Եթէովպիայէն , Եղա-
մէն , Սենաարէն , Եմաթէն , ու
ծովու կղզիներէն իրեն առնէ իր
ժողովուրդին մնացած մնացորդը .
12 Եւ ազգերուն դրօշակ պիտի վերցը-
նէ , ու Իսրայէլին աքսորուածները
պիտի ժողվէ . ու երկրին չորս ան-
կիւններէն Յուդային Կցրուածները
13 պիտի ժողվէ ։ Ու Հ Եփրեմին նա-
խանձը պիտի վերնայ . և Յուդայի
մէջ եղող նեղիչները պիտի կոր-
սուին . Եփրեմը պիտի չնախանձի
Յուդային , ու Յուդան պիտի չնե-
14 ղէ Եփրեմը . Հապա անոնք դէպ 'ի
արեւմուտք Փղշտացւոց Ոուսերուն
վրայ պիտի թռչին , ու մէկտեղ ա-
րեւելքի բնակիչները պիտի կողոպ-
տեն . Յ Եդովմի և Մովաբի վրայ
ձեռքերնին պիտի երկընցընեն . ու
Ամմոնի որդիքը՝ անոնց Ղպիտի
15 հնազանդին ։ Եւ Տէրը՝ Եգիպտոսի
Ճծովին լեզուն պիտի §կործանէ .
ու իր հովին սաստիկ զօրութեամբը
ձեռքը գետին վրայ պիտի երերցը-
նէ , ու զանիկայ եօթը ձորի բաժ-
նելով պիտի զարնէ , Յայնպէս որ
16 անոր վրայ կօշիկներով քալուի ։ Եւ
իր ժողովուրդին մնացած մնացոր-
դին համար Յ ճանուկ ճամբայ մը
պիտի ըլլայ Ասորեստանէն , Ն ինչ-
պէս որ եղաւ Իսրայէլին այն օրը՝ որ
Եգիպտոսի երկրէն ելան ։

ԳԼ․ ԺԲ

1—6 Հաւատացեալներուն ուրախալից շնորհա-
կալութիւնը՝ Աստուծոյ ողորմութիւններուն
համար ։

1 Եւ –այն օրը պիտի ըսես . Ո՛վ
Տէր՝ քեզ պիտի օրհնեմ , որ
Թէև ինծի բարկացած էիր , սակայն

Ն․ Ք․ ԶՓ․ Իբր 713

Լ Յոբ․ Ե․ 23։ Գլ․ Բ․ 4։ ԼԵ․ 9։
Ր Ամբ․ Բ․ 14։
Ժ Գլ․ Բ․ 11։
Ի Հմր 1։ Հռով․ ԺԵ․ 12։
Լ Հռով․ ԺԵ․ 10։
Ի Եբր․ Դ․ 1։ Ա։
Ճ Զաք․ Ժ․ 10։
Կ Յով․ Է․ 35։ Յակ․ Ա․ 1։
Հ Երեմ․ Գ․ 18։ Եզեկ․ ԼԷ․ 16։ 17։ 22։ Ովս․ Ա․ 11։
Ո Կամ՝ սահմաններուն
Յ Դան․ ԺԱ․ 41։
Ղ Գլ․ Կ․ 14։
Ճ Զաք․ Ժ․ 11։
§ Կամ՝ չորցնէ ․
Յ Յայտ․ ԺԶ․ 12։
Յ Գլ․ ԺԹ․ 23։
Ն Ել․ ԺԴ․ 29։ Գլ․ ԾԱ․ 10։ ԿԲ․ 12։ 13։
– Գլ․ Բ․ 11։

Ն. Ք. ԳՃ.
Իրր 713

բ Եղ. ԺԵ. 2։ Սաղ. ՃԺԸ. 14։
գ Սաղ. ԽԶ. 18։
դ Յովհ. Գ. 10, 14։ Է. 37. 38։
ե ա Մն. ԺԶ. 8։ Սաղ. ՃԵ. 1։
զ Սաղ. ՃԽԵ. 4. 5, 6։
է Սաղ. ԼԴ. 3։
ը Եղ. ԺԵ. 1, 21։ Սաղ. ԿԸ. 32. ՂԸ. 1։
թ Գլ. ԾԴ. 1։ Զաք. Զ. 14։
ժ Սաղ. ՀԱ. 22։ ՁԹ. 18։ Գլ. ԽԱ. 14, 16։

բարկութիւնդ ետ դարձաւ, և
2 զիս մխիթարեցիր։ Ահա իմ փըր-
կութիւնս Աստուած է. ես պիտի
յուսամ, ու պիտի չվախնամ. քան-
զի իմ բ զօրութիւնս ու օրհնու-
թիւնս Տէր գ Եհովան է. ու անի-
3 կայ իմ փրկութիւնս եղաւ։ Եւ
ուրախութեամբ դ ջուր պիտի քա-
շէք փրկութեան աղբիւրներէն։
4 Ու ան օրը պիտի ըսէք. ե Գոհացէք
Տէրոջմէ, անոր անունը կանչեցէք
զ անոր գործքերը ազգերուն մէջ
պատմեցէք. յիշեցէք՝ որ է անոր
5 անունը բարձր է։ ը Տէրոջը սաղ-
մոս ըսէք, վասն զի անիկայ մե-
ծամեծ բաներ ըրաւ. ասիկայ բո-
6 լոր երկրի մէջ գիտցուած է։ Ո՛վ
թ Սիոնի բնակիչները՝ աղաղակեցէք
ու ցնծացէք. քանզի ձեր մէջը
ժ Իսրայէլին Սուրբը մեծ է։

## ԳԼ. ԺԳ

1 Աստուած իր բարկութիւնը 'ի գործ դնող բանակները կը ժողվէ. 6 Մարաց ձեռքովը Բաբելոնը կործանելու կը սպառնայ։ 19 Բաբելոնի ամայութիւնը։

Իրր 712

ա Գլ. ԽԱ. 1։ ԽԵ. 1։ Երեմ. Ծ. ԾԱ։
բ Երեմ. ԾԱ. 25։
գ Գլ. Ե. 26։ ԺԸ. 3։ Երեմ. Ծ. 2։
դ Գլ. Ժ. 32։
* Եբր. սըրբուածներուս
ե Յովել. Գ. 11։
զ Սաղ. ՃԽԹ. 2. 5, 6։
է Սոփ. Ա. 7։ Յայտ. Զ. 17։
ը Յոր. Լ. 23։ Յովել. Ա. 15։
թ Սաղ. ԽԸ. 6։ Գլ. ԻԱ. 3։
ժ Մաղ. Դ. 1։
ի Սաղ. ՃԴ. 35։ Առակ. Բ. 22։

1 Բաբելոնի պատգամը՝ որ Ամովսի
որդւոյն Եսայիին յայտնուե-
ցաւ։
2 Մերկ ա լերանը վրայ բ դրօշակ
տնկեցէք. անոնց ձայն վերցուցէք,
գ ձեռքով նշան ըրէք, որ իշխաննե-
3 րուն դռները գան։ Իմ * որոշած-
ներուս հրաման ըրի. իմ ե զօրա-
ւորներս՝ զ իմ փառքիս համար
ուրախացողները՝ իմ բարկութիւնս
4 'ի գործ դնելու կանչեցի։ Լեռնե-
րուն վրայ բազմութեան մը ձայն
կայ, մեծ ժողովուրդի մը ձայնին
պէս. միկտեղ ժողվուած ազգե-
րուն թագաւորութեանցը աղմու-
կին ձայնը կայ. զօրաց Տէրը պա-
տերազմի համար իր զօրքերը աչքէ
5 կ'անցընէ։ Հեռաւոր երկրէ՝ երկ-
նից ծայրէն Տէրը ու անոր բարկու-
թեանը գործիքները բոլոր երկիրը
աւրելու կու գան։
6 Ողբացէք, վասն զի է Տէրոջը օրը
մօտ է. ը անիկայ Ամենակարողէն
7 կործան աւերման պէս կու գայ։ Անոր
համար ամէն ձեռքերը պիտի թու-
լնան, ու ամէն մարդուն սիրտը պի-
8 տի հալի։ Եւ անոնք պիտի սոս-
կան. նեղութիւն ու անձկութիւն
պիտի տիրէ անոնց. թ ծննդական կը-
նոջ պէս ցաւ պիտի քաշեն. ամէն
մարդ իր ընկերին վրայ պիտի նայի
ու ապշի. անոնց երեսները բոցա-
գոյն պիտի ըլլան։
9 ժ Ահա Տէրոջը օրը կու գայ ան-
գթութեամբ, սրտմտութեամբ և
սաստիկ բարկութեամբ, որ երկիրը
աւերակ դարձընէ, ու անոր ի մե-

ղաւորները անկէ բնաջինջ ընէ։
10 Վասն զի երկնից աստղերը ու ա-
նոնց համաստեղութիւնները՝ ի-
րենց լոյսը պիտի չտան. Արեւը իր
ելած ատենը պիտի խաւարի, և
11 լուսինը իր լոյսը պիտի չտայ։ Ու
ես պիտի պատժեմ աշխարհը իր
չարութեանը համար, և ամբա-
րիշտները իրենց անօրէնութեանը
համար. ու ի հպարտներուն ամ-
բարտաւանութիւնը պիտի դադրե-
ցընեմ. և բռնաւորներուն գոռո-
12 զութիւնը պիտի ցածցընեմ։ Մար-
դը՝ զուտ ոսկիէն, ու Ոփիրի ոսկիէն
13 պատուական պիտի ընեմ։ ժ Աս-
տի պիտի սարսեմ երկինքը, ու եր-
կիրը իր տեղէն պիտի սասանի զօ-
րաց Տէրոջը սրտմտութեամբը՝ ա-
նոր սաստիկ բարկութեանը օրը։
14 Եւ որսորդէն փախչող եղնիկի պէս
այծեման պէս պիտի ըլլան. ու
հովիւ չունեցող ոչխարներու պէս՝ որ զանոնք
ժողվող մը չկայ, և անոնց ամէն
մէկը իր ժողովուրդին պիտի դառ-
նայ, և ամէն մարդ իր երկիրը պի-
15 տի փախչի։ Ով որ գտնուի՝ պի-
տի խոցուի, ու ով որ բռնուի
16 սրով պիտի իյնայ։ Եւ անոնց
տղաքը՝ աչքերնուն առջին գետինը
պիտի զարնուին, անոնց տուները
պիտի կողոպտուին, և անոնց կը-
17 նիկները պիտի պղծուին։ Ահա
անոնց վրայ Մարաց ազգը պիտի
յարուցանեմ, որ անոնք արծաթը
բանի տեղ չեն դներ, ու ոսկիէն չեն
18 ախորժիր։ Անոնց աղեղները՝ երի-
տասարդները պիտի խոցեն. ու ա-
նոնք որովայնի պտուղին գթու-
թիւն պիտի չընեն. և անոնց աչքը
19 պիտի չխնայէ տղաքներուն։ Ու
թագաւորութիւններուն փառքը՝
և Քաղդէացւոց փառաւորութեանը
պարծանքը եղող Բաբելոնը թշնա-
մւոյն պիտի ըլլայ, ինչպէս որ
Աստուած Սոդոմը ու Գոմորը
20 կործանեց։ Հոն յաւիտեան
բնակութիւն պիտի չըլլայ, և ազ-
գէ ազգ մարդ պիտի չբնակի. ու
հոն Արաբացիք վրան պիտի չը-
կանգնեն, և հովիւները իրենց հօ-
տը հոն պիտի չպառկեցընեն.
21 Հապա հոն † վայրենի կատու-
ներ" պիտի պառկին. ու անոնց
տուները ոռնացող անասուններով
պիտի լեցուին. և հոն ջայլամներ
պիտի բնակին, ու հոն այծամարդ-
22 ներ պիտի կաքաւեն։ Եւ անոր
պալատներուն մէջ բորենիներ, ու
զբօսանաց տուներուն մէջ ճագար-
ներ պիտի կանչուըռտեն. և անոր
ժամանակը հասնելու վրայ է. ու
անոր օրերը ալ պիտի չերկըն-
նան։

Ն. Ք. ԳՃ.
Իրր 712

ի Գլ. ԻԴ. 21, 23։ Եզեկ. ԼԲ. 7։ Յովել. Բ. 31։ Գ. 15։ Մատ. ԻԴ. 29։ Մար. ԺԳ. 24։ Ղուկ. ԻԱ. 25։
ի Գլ. Բ. 17։
ժ Անգ. Բ. 6։
լ Սաղ. ՃԺ. 5։ Ողբ. Ա. 12։
ճ Երեմ. Ծ. 16։ ԾԱ. 9։
յ Սաղ. ՃԼԷ. 9։ Նաւ. Գ. 10։ Զաք. ԺԴ. 2։
ն Գլ. ԻԱ. 2։ Երեմ. ԾԱ. 11. 28։ Դան. Ե. 28. 31։
շ Գլ. ԺԴ. 4, 22։
ո Ծն. ԺԹ. 24. 25։ Բ Օր. ԻԹ. 23։ Երեմ. ԽԹ. 18։ Ծ. 40։
չ Երեմ. Ծ. 3, 39։ ԾԱ. 29. 62։
պ Գլ. ԼԴ. 11-15։ Յայտ. ԺԸ. 2։
† Կամ՝ անապատի գազաններ
ջ Երեմ. ԾԱ. 33։

Ն.Ք. Ա. Ք.
Իրր 712

## ԳԼ. ԺԴ

1 Աստուածային ողորմութեամբ Իսրայէլին գերեդարձութիւնը. 4 անոնց Բաբելոնի վրայ երգելու յաղթութեան երգը։ 24 Աստուծոյ խորհուրդը Ասորեստանի դէմ, 29 և անոր սպառնալիքը Փղշտացւոց դէմ։

1 Վասն զի Տէրը ա պիտի ողորմի
Յակոբին, և Իսրայէլը նորէն
բ պիտի ընտրէ, ու զանոնք իրենց
երկրին վրայ պիտի հանգստացընէ.
և գ օտարազգիներ պիտի միանան
անոնց, ու Յակոբին տանը պիտի
2 յարին։ Եւ ժողովուրդները զանոնք պիտի առնեն՝ ու դ իրենց տեղը պիտի տանին. ու Իսրայէլի տունը պիտի ժառանգէ զանոնք Տէրոջը երկրին վրայ՝ իբրև ծառաներ ու աղախիններ. և անոնք՝ իրենց գերեվարները գերի պիտի առնեն, ե ու իրենց բռնութիւն ընողներուն վրայ պիտի տիրեն։
3 Եւ պիտի ըլլայ որ՝ երբոր Տէրը
քեզ հանգստացընէ քու աշխատանքէդ, տանջանքէդ, ու քու
վրադ դրուած ծանր ծառայութե-
4 նէն, Բաբելոնի թագաւորին համար աս առակը զրուցես ու ըսես. զ Ի՜նչպէս դադարեցաւ բռնութիւն ընողը. է՜նչպէս դադարեցաւ հար-
5 կապահանջ քաղաքը։ Տէրը ը ամբարիշտներուն գաւազանը՝ ու իշ-
6 խողներուն ցուպը կոտրեց։ Սրտմտութեամբ և անդադար հարուածով ազգերը զարնողը՝ և բարկութեամբ ժողովուրդներուն վրայ իշխողը հէնց կը հալածուի, ու ար-
7 գիլող մը չկայ։ Բոլոր երկիրը
հանգստացաւ ու հանդարտեցաւ,
և ցնծութեան ձայներ կը հանեն։
8 Նաև է մայրերը ու Լիբանանի եղեւիններ քեզի համար կ'ուրախանան ու կ'ըսեն. Քանի որ դուն պառկեր ես, մեր վրայ փայտ կտրող
9 չելաւ։ Ը Դժոխքը վարէն քեզի համար դղրդեցաւ, որ քու գալուստդ դիմաւորէ. քեզի համար արթընցուց մեռելները՝ երկրիս բոլոր իշխանները. բոլոր ազգերուն թագաւորները իրենց աթոռներէն վեր-
10 ցուց։ Անոնք ամէնը պատասխան կու տան, ու քեզի կ'ըսեն. Միթէ դո՞ւն ալ մեզի պէս տկարացար,
11 ու մեզի նմանեցար։ Քու փառքդ, և տաւիղներուդ ձայնը դերեզմանը իջան. քու տակդ զեռուններ տարածուեցան, ու որդերը քեզ կը
12 ծածկեն։ Ո՛վ առտուանց ծագող
Արուսեակ՝ ժ ի՜նչպէս երկինքէն ինկար, ու մինչև գետինը կործանեցար, դուն որ ազգերը նկուն կ'ը-
13 նէիր։ Դուն սրտիդ մէջը ըսած էիր. ի Երկինքը ելլեմ, և իմ աթոռս Աստուծոյ աստղերէն վեր
բարձրացընեմ. և ժողովքի լեռը՝
14 ի հիւսիսի քովերը բնակիմ. Ամպերու բարձրութիւններուն վրայ ելլեմ, ծ Բարձրեալին նմանիմ։
15 Բայց անհ դժոխքը կ'իջնես՝ գու-
16 բին խորունկ տեղուանքը։ Քեզ տեսնողները քու վրադ պիտի զարմանան, ու քեզի նայելով պիտի ըսեն. Աս ան մա՞րդն է՝ որ երկիրը կը սարսէր, թագաւորութիւնները
17 կը դողացընէր. Աշխարհս անապատ կը դարձնէր, և անոր քաղաքները աւերակ կ'ընէր, ու իր գերիները
18 տուներնին չէր խրկեր։ Ազգերուն բոլոր թագաւորները՝ ամէն մէկը պատուով իր տանը մէջ կը պառ-
19 կի։ Բայց դուն զարշելի ընձիւղի մը պէս՝ գուբի քարերուն մէջը իջնող՝ սրով խոցուած մեռելներուն հանդերձին պէս՝ ոտքի տակ կոխուած դիակի պէս՝ քու գերեզմա-
20 նէդ դուրս նետուեցար։ Դուն թաղումով անոնց հետ չես միանար. քանզի քու երկիրդ աւրեցիր, ու ժողովուրդդ սպաննեցիր. հ չարերուն սերունդը յաւիտեան պիտի
21 չյիշուի։ Սպանութիւն պատրաստեցէք անոր տղոցը՝ յ իրենց հայրերուն անօրէնութեանը համար, որ չելլեն, ու երկիրը չժառանգեն, և աշխարհիս երեսը * թշնամիներով չլեցընեն։
22 Քանզի զօրաց Տէրը կ'ըսէ որ՝ Անոնց վրայ պիտի ելլեմ, և Բաբելոնի ն անունը, ու շ մնացորդը, և ո զաւակը, ու սերունդը պիտի
23 կտրեմ՝ կ'ըսէ Տէրը. Եւ չ զանիկայ ոզնիներուն ժառանգութիւն, ու ջուրի լճակներ պիտի ընեմ. և կորստեան աւելով պիտի աւլեմ զանիկայ՝ կ'ըսէ զօրաց Տէրը։
24 Զօրաց Տէրը երդում ըրաւ ու ըսաւ. Ինչպէս որ խորհեցայ, անշուշտ անանկ պիտի ըլլայ, ու ինչ որ նախասահմանեցի, ան պիտի
25 կատարուի. Որ Ասորեստանցին իմ երկրիս մէջը պիտի կոտրեմ, ու զանիկայ լեռներուս վրայ պիտի կոխկրտեմ. պ և անոր լուծը անոնց վրայէն պիտի վերնայ, ու անոր բեռը անոնց ուսէն պիտի վեր-
26 նայ։ Բոլոր երկրիս համար որոշուած նախասահմանութիւնը ասիկայ է. ու ամէն ազգերուն վրայ երկընցած ձեռքը ասիկայ է։
27 ջ Վասն զի զօրաց Տէրը նախասահմանեց, և ո՞վ կրնայ զանիկայ խափանել. ու անոր ձեռքը երկընցած է, և ո՞վ կրնայ զանիկայ ետ դարձընել։
28 ռ Աքազ թագաւորին մեռած տարին աս պատգամը եղաւ.
29 Ո՛վ բոլոր Փղշտացւոց երկիր՝

Ա Սաղ. ճբ. 13։
Բ Զաք. ա. 17։ բ. 12։
Գ Գլ. կ. 4, 5, 10։ Եփե. բ. 12, 13, 14։
Դ Գլ. խթ. 22։ կ. 9։ կզ. 20։
Ե Գլ. կ. 14։
Զ Գլ. ժգ. 19։ Ամբ. բ. 6։ Յայտ. ժը. 16։
Է Սաղ. ճիե. 3։
Ը Գլ. ծե. 12։ Եզեկ. լա. 16։
Թ Եզեկ. լբ. 21։
Ժ Գլ. լդ. 4։
Ի Մատ. ժա. 23։
Լ Դան. ը. 10։

Ն. Ք. Ա. Ք.
Իրր 712
Խ Սաղ. խը. 2։
Ծ Գլ. խէ. 8։ Բ Թես. բ. 4։
Կ Մատ. ժա. 23։
Հ Յոբ. ժը. 19։ Սաղ. խա. 10։ լէ. 28։ ճթ. 13։
Ձ Ել. ի. 5։ Մատ. իգ. 35։
* Կամ՝ քաղաքներով
Ղ Առակ. ժ. 7։ Երեմ. ծա. 62։
Ճ Գ Թագ. ժդ. 10։
Մ Յոբ. ժը. 19։
Յ Գլ. լդ. 11։ Սոփ. բ. 14։
Ն Գլ. ժ. 27։
Շ Բ Մն. ի. 6։ Յոբ. թ. 12։ իգ. 13։ Սաղ. լգ. 11։ Առակ. ժթ. 21։ իա. 30։ Գլ. խգ. 13։ Դան. դ. 31, 35։
Ո Դ Թագ. ժզ. 20։
726

Ն. Ք. ԴՓ. 726
Բ Մն. իզ. 6։
ա Թագ. ԺԸ. 8։

ՆՔեզ զարնողին գաւազանը կոտրե-
լուն համար մի՛ ուրախանար. քան-
զի օձին արմատէն քարբ պիտի ելլէ,
[ա]ու անոր պտուղը կիզող թեւաւոր
30 օձ պիտի ըլլայ։ Եւ աղքատներուն
անդրանիկները պիտի կերակրին,
ու չքաւորները ապահովութեամբ
պիտի պառկին. և քու արմատդ
սովով պիտի կորսնցընեմ. ու ա-
նիկայ քու մնացորդդ պիտի մեռ-
31 ցընէ։ Ողբա՛ ով դուռն, աղա-
ղակէ՛ ով քաղաք. դուն ով բոլոր
Փղշտացւոց երկիր՝ տակնուվրայ
[բ]եղար. քանզի հիւսիսէն մէկ
ծուխ մը կու գայ, ու անոր զօր-
քերէն առանձնական մը պիտի
32 չըլլայ։ Եւ ազգաց դեսպաններուն
ի՞նչ պատասխան պիտի տրուի։
Թէ [գ]Տէրը Սիոնին հիմունքը հաս-
տատեց, ու [դ]անոր ժողովուրդին
աղքատները հոն պիտի ապաստա-
նին։

գ Սաղ. ձէ. 1, 5։ ճբ. 16։
դ Սոփ. գ. 12։ Զաք. ԺԱ. 11։

## ԳԼ. ԺԵ

1—9 Մովաբին ողբալի վիճակը։

իբր 726
ա Երեմ. խը. 1։ ա։ Եզեկ. իե. 8—11։ Ամով. բ. 1։
բ Թուե. իա. 28։
գ Գլ. Ժզ. 12։
դ Ղև. իա. 5։ Գլ. գ. 24։ Իբ. 12։ Երեմ. խէ. 5։ խը. 1, 37, 38։ Եզեկ. է. 18։
ե Երեմ. խը. 38։
* Եբր. լացի մէջ իջնեն։
զ Գլ. Ժզ. 9։
է Գլ. Ժզ. 11։ Երեմ. խը. 31։
ը Գլ. Ժզ. 14։ Երեմ. խը. 34։
թ Երեմ. խը. 5։
ժ Թուե. լբ. 35 Նամրա։

1 [ա]Մովաբի պատգամը։
Յիրաւի Մովաբին [բ]Ար քա-
ղաքը գիշերով կոխուեցաւ՝ ու կոր-
ծանեցաւ. յիրաւի Մովաբին Կիր
քաղաքը գիշերով կոխուեցաւ՝ ու
2 կործանեցաւ։ [գ]Անիկայ տաճարը
ու Դեբոնը՝ և բարձր տեղերը ելաւ
լալու համար. Նաբաւի ու Մեդա-
բայի վրայ Մովաբը պիտի ողբայ.
[դ]անոր ամէն գլուխները կնտակ
պիտի ըլլայ. ամէն մօրուք պիտի
3 կտրուի։ Անոր փողոցներուն մէջ
քուրձ պիտի հագնին. [ե]անոր տա-
նիքներուն վրայ, ու հրապարակ-
ներուն մէջ ամէնքը պիտի ողբան
4 ու *լան։ [զ]Ու Եսեբոն ու Եղէա-
ղէ պիտի աղաղակեն. անոնց ձայ-
նը մինչև Յասսա պիտի լսուի.
անոր համար Մովաբին սպառա-
զէնները պիտի կանչուըռտեն. ի-
րենց հոգին պիտի ձանձրանան։
5 [է]Իմ սիրտս Մովաբի համար պիտի
աղաղակէ. անոր փախստականնե-
րը [ը]Իրեք տարեկան երինջի պէս
մինչև Սեգովր պիտի փախչին. քանզի
[թ]Ղուիթի զառ 'ի վերը լալով պի-
տի ելլեն. վասն զի Որոնայիմի
ճամբան կոտորածի աղաղակ պիտի
6 հանեն։ Քանզի [ժ]Նեմրիմի ջու-
րերը կ'աւրուին. քանզի խոտը կը
չորնայ, կանանչ խոտը կը հատնի,
7 ու կանանչեղէն չմնար։ Անոր հա-
մար իրենց ստացուածքին մնացոր-
դը, ու բոլոր պահածնին՝ ուռի-
8 ներուն ձորը պիտի տանին։ Քանզի
Մովաբին սահմանը աղաղակ
շրջապատեց. անոր ողբը մինչև
Եգղայիմ, անոր ողբը մինչև Բերե-
9 լիմ հասաւ։ Քանզի Դեմոնի ջու-
րերը արիւնով պիտի լեցուին.
քանզի Դեմոնի վրայ աւելի չարիք՝
[ա]ու Մովաբէն ազատուածներուն
վրայ ու երկրին մնացորդին վրայ
[բ]առիւծներ պիտի խրկեմ։

Ն. Ք. ԴՓ. իբր 726։
ա Դ Թագ. ԺԷ. 25։

## ԳԼ. ԺԶ

1 Մարգարէն կը յորդորէ Մովաբացիները որ Սիոնի թագաւորութեանը հնազանդին. 6 անոնց սպառնալիք կ'ընէ իրենց ամբարտաւանութեանը համար. 9 անոնց վրայ կ'ողբայ. 12 անոնց վրայ հասնելու պատուհասը կ'իմացընէ։

1 [ա]Ղրկեցէ՛ք գառը երկրի տիրողին,
[բ]Սելայէն անապատի ճամբա-
2 յով Սիոնի աղջկան լեռը։ Ու
Մովաբին աղջիկները [գ]Առնոնի
անցքերուն քով՝ բոյնէն վռնը-
տուած թափառական թռչունի
3 պէս պիտի ըլլան։ Խորհուրդ
տուր, դատաստան ըրէ, քու հո-
վանիդ կէս օրուան ատենը գիշե-
րի պէս դի՛ր. աքսորուածները
պահէ՛, ու փախստականները ձեռք
4 մի՛ տար։ Իմ աքսորուածներս
թող քու քովդ պանդուխտի պէս
բնակին՝ ո՛վ Մովաբ. դուն անոնց
ծածկոյթ եղիր կործանողին երե-
սէն. քանզի բռնաւոր չմնաց.
աւրողը պակսեցաւ, և կոխողները
5 երկրին վրայէն վերցան։ Ու [դ]Գա-
թոռը ողորմութեամբ պիտի հաս-
տատուի. և անոր վրայ՝ Դաւիթի
խորանին մէջ, անանկ դատաւոր մը
պիտի նստի [ե]ճշմարտութեամբ,
որ իրաւունքը պիտի փնտռէ, ու
արդարութիւնը շուտով 'ի գործ
պիտի դնէ։
6 [զ]Մովաբին ամբարտաւանու-
թիւնը լսեցինք. անիկայ խիստ
ամբարտաւան է. անոր գոռոզու-
թիւնը՝ ամբարտաւանութիւնը ու
սրտմտութիւնը լսեցինք. [է]անոր
սնապարծ խօսքերը պարապ են։
7 Աս պատճառով Մովաբ՝ Մովաբին
համար [ը]պիտի ողբայ. ամէն մէկը
պիտի ողբայ. [թ]Կիրհարէսեթին
հիմանցը համար պիտի հեծէք.
անոնք յիրաւի †կործանուած են։
8 [ժ]Քանզի Եսեբոնին դաշտերը նուա-
ղեցան. ազգաց իշխանները՝ [ի]Սե-
բամայի որթին պինդ պատուա-
կան ճիւղերը կոտրեցին, որոնք
մինչև Յազեր հասեր էին. ա-
նապատը շրջապատեր էին. ա-
նոր շառաւիղները երկըննալով՝
9 ծովէն անցեր էին։ [լ]Անոր հա-
մար Սեբամայի որթին վրայ Յա-
զերի լացովը պիտի լամ. քեզ աչ-
քիս արցունքովը պիտի ոռոգեմ՝
[խ]ո՛վ Եսեբոն ու Եղէաղէ. վասն զի
ամառնային պտուղիդ և հունձքիդ
համար եղած աղաղակը դադարե-

ա Դ Թագ. Գ. 4։
բ Դ Թագ. ԺԴ. 7։
գ Թուե. իա. 13։
դ Դան. է. 14, 27։ Միք. դ. 7։ Ղուկ. ա. 33։
ե Սաղ. հբ. 2։ ղզ. 13։ ղը. 9։
զ Երեմ. խը. 29։ Սոփ. բ. 10։
է Գլ. իը. 15։
ը Երեմ. խը. 20։
թ Դ Թագ. գ. 25։
† Կամ՝ վիրաւորուած
ժ Գլ. իդ. 7։
ի Հմր. 9։
լ Երեմ. խը. 32։
խ Գլ. ԺԵ. 4։

Ն. Ք. ԳՖ.
Յառ 726

Գլ. ԻԴ. 3։ Երեմ. ԽԸ. 33։
Գլ. ԺԵ. 5։ ԿԴ. 15։ Երեմ. ԽԸ.
Գլ. ԺԵ. 2։
* Եբր. ան ատենէն
Գլ. ԻԱ. 16։

10 ցաւ ։ Եւ պտղաբեր արտերէն՝
ուրախութիւնը ու ցնծութիւնը
պիտի վերնայ . ու այգիներու մէջ
երգող ու ցնծութեան ձայն պիտի
չլսուի . Հնձանի մէջ՝ ալ գինի պի-
տի չկոխեն . անոնց աղաղակը վեր-
11 ջացուցի ։ Ասոր համար իմ
աղիքս Մովաբի համար, ու փորս
Կիրհարեսեթի համար քնարի պէս
12 ձայն պիտի տայ ։ Ան ատենը պի-
տի երեւնայ՝ թէ ինչպէս Մովաբ իր
բարձր տեղը յոգնելով պիտի յոգ-
նի, ու իր սրբարանը պիտի մտնէ
աղօթք ընելու համար, բայց օգուտ
մը պիտի չըլլայ ։
13 Աս է ան խօսքը՝ որ Տէրը *շա-
տոնցմէ Մովաբին համար խօսեր է .
14 Բայց հիմա Տէրը խօսեցաւ, ու ը-
սաւ . Իրեք տարուան մէջ՝ վարձ-
կանի տարիներուն պէս՝ Մովաբին
փառքը պիտի անարգուի ան բոլոր
մեծ բազմութիւնովը, և մնացորդը
խիստ քիչուոր ու տկար պիտի ըլլայ ։

## ԳԼ. ԺԷ

1 Ասորւոց և Իսրայէլին սպառնալիք կ'ըլլայ ։ 6 Միայն մէկ մնացորդը կռապաշտութիւնը պիտի ձգէ . 9 իսկ միւսները պիտի հարստահարին իրենց ամբարշտութեանը համար ։ 12 Իսրայէլի թշնամիներուն թշուառութիւնը ։

Յառ 741
Երեմ. ԽԹ. 23։ Ամով. Ա. 3։ Զաք. Թ. 1։ Տես Դ Թագ. ԺԶ. 9։ Կատարուեցաւ 740
Երեմ. Է. 33։
Գլ. Է. 16։ Ը. 4։
Գլ. Ժ. 16։
Երեմ. ԺԱ. 33։
Յառ 741
Գլ. ԻԴ. 13։
Միք. Է. 7։

1 Դամասկոսի պատգամը ։
Ահա Դամասկոսը քաղաք ըլ-
լալէն պիտի վերնայ, ու աւերակի
2 շեղջ մը պիտի ըլլայ ։ Արոերի
քաղաքները պիտի թողուին . հօ-
տերու փարախներ պիտի ըլլան, որ
անոնք պառկին, ու վախցընող
3 չըլլայ ։ Ու Եփրեմէն՝ պարիսպը
պիտի վերնայ, և Դամասկոսէն ու
Ասորւոց մնացորդէն՝ թագաւորու-
թիւնը . անոնք Իսրայէլի որդւոցը
փառքին պէս պիտի ըլլան, կ'ըսէ
4 զօրաց Տէրը ։ Եւ ան օրը Յակո-
բին փառքը պիտի պակսի, ու ա-
նոր մարմնոյն գիրութիւնը պիտի
5 նիհարնայ ։ Եւ այնպէս պիտի
ըլլայ, ինչպէս որ հնձողը երբոր
ցորեն կը հնձէ, թեւին վրայ հաս-
կերը կը ժողվէ . ու Ռափայնոց
հովիտը հասկեր քաղողին պէս պի-
6 տի ըլլայ ։ Ու ինչպէս որ ձիթե-
նին կը թօթվեն, ու բարձր ոստին
ծայրը երկու իրեք հատ՝ և խիստ
պտղաբեր ոստին վրայ չորս հինգ
հատ կը մնայ, անոր վրայ ալ գոյն
ճիւղեր պիտի մնան, կ'ըսէ Իսրայէ-
լին Տէր Աստուածը ։
7 Ան օրը մարդ իր Ստեղծողին
պիտի նայի, ու իր աչքերը Իսրա-
8 յէլի Սուրբը պիտի դիտեն ։ Եւ
իր ձեռքերուն գործը եղող սեղան-
ներուն պիտի չնայի, ու իր մատ-
ներուն շինածը, թէ՛ Աստարովթի
կուռքերը, և թէ արեգական կուռ-
9 քերը պիտի չդիտէ ։ Ան օրը՝ անոր
ամուր քաղաքները՝ Իսրայէլի որ-
դւոցը երեսէն ձգուած անպիտան
թուփերու և բարձր ոստերու պիտի
նմանին, ու աւերակ պիտի ըլլան ։
10 Որովհետև դուն քու փրկութեանդ
Աստուածը մոռցար, և քու զօրու-
թեանդ վէմը չյիշեցիր, անոր հա-
մար հաճելի տունկեր պիտի տնկես,
և օտար երկրէ բերուած տունկեր
11 պիտի տնկես ։ Տնկածդ՝ ցորեկը
պիտի աճեցընես, ու ցանածդ՝ ա-
ռաւօտուն պիտի բուսցընես . բայց
բերքին օրը՝ հունձքը պիտի պակ-
սի, և սաստիկ տրտմութիւն պիտի
ըլլայ ։
12 Վա՜յ շատ ժողովրդոց բազմու-
թեանը՝ որ ծովու ձայնին պէս կը
գոռան, ու ժողովուրդներուն աղ-
մուկին՝ որ սաստիկ ջուրերու ձայ-
13 նին պէս կը գոչեն ։ Ժողովուրդնե-
րը շատ ջուրերու ձայնին պէս կը
գոչեն . բայց Աստուած զանոնք
պիտի յանդիմանէ, և հեռու պիտի
փախչին . ու լեռներուն վրայի մը-
ղեղին պէս հովէն երեսէն՝ և մըրի-
կին առջևէն գլորուած փուշին պէս
14 պիտի հալածուին ։ Ու իրիկուան
ատենն՝ ահա խռովութիւն պիտի ըլլայ.
և առաւօտ չեղած՝ բնաջինջ պիտի
ըլլան . մեր յափշտակիչներուն բա-
ժինը՝ ու մեր կողոպտիչներուն վի-
ճակը ասիկայ է ։

Ն. Ք. ԳՖ.
Յառ 741
Սաղ. ԿԸ. 20։
Երեմ. Գ. 23։
Սաղ. Թ. 5։
Սաղ. ՁԳ. 13։ Ովս. ԺԳ. 8։

## ԳԼ. ԺԸ

1 Մարգարէն կը ցուցընէ թէ Աստուած իր ժողովուրդին խնամքը տանելով՝ Եթէովպացիները պիտի կործանէ, 7 և թէ աս պատճառով եկեղեցին պիտի աճի ։

Յառ 714
Գլ. Ի. 4, 5։ Եզեկ. Լ. 4, 5, 9։ Սոփ. Բ. 12։ Գ. 10։
Կամ՝ շառաչիւն հանող
Հմր 7։
Կամ՝ Երկայնահասակ ու լերկ
Գլ. Ե. 26։
Կամ՝ խոտի վրայի

1 Վա՜յ Եթէովպացւոց գետերուն
անդին կողմը եղող թեւերով
2 հովանաւոր երկրին . Որ ծովէն՝
պրտուեղէն նաւակներով ջուրի ե-
րեսին վրայէն դեսպաններ կը խրկէ ։
Ո՛վ արագընթաց դեսպաններ՝ գա-
ցէ՛ք տարածուած ու խիստ ազ-
գին, սկիզբէն մինչև հիմա ահեղ
ժողովուրդին, խիստ զօրաւոր ու
ոտքի կոխկռտող ազգին, որուն
3 երկիրը գետերը կ'աւրեն ։ Ո՛վ
աշխարհիս բոլոր բնակիչները՝ ու
երկրի վրայ բնակողներ, երբոր
լեռները դրօշակ կանգնուի՝ նայե-
ցէ՛ք, ու երբոր փող հնչուի՝ լսե-
4 ցէ՛ք ։ Քանզի Տէրը ինծի այսպէս
ըսաւ . Ես հանդիստ պիտի ըլլամ,
ու իմ բնակարանէս պիտի նայիմ,
կէս օրուան պայծառ տաքու-
թեանը պէս, ու հնձոց տաքու-
թեանը մէջ ցօղալից ամպի պէս ։
5 Քանզի հունձքի ժամանակէն ա-
ռաջ, երբոր ընձիւղը կը մեծնայ,

Ն. Ք. գՔ. Իրր 714

ու ծաղիկը ազոխ ըլլալով հասնելու
վրայ է , անիկայ ճիւղերը յոտո-
ցով պիտի կտրէ , և ուռերը պիտի
6 փրցընէ նետէ ։ Անոնք մէկտեղ
լերանց թռչուններուն՝ ու երկրի
գազաններուն պիտի թողուին . և
թռչունները ամառը անոնց վրայ
պիտի անցընեն . ու երկրի ամէն
գազանները ձմեռը անոնց վրայ պի-
7 տի անցընեն ։ Այն ժամանակը զօ-
րաց Տէրոջը , տարածուած ու
խիստ ժողովուրդէն՝ և սկիզբէն
մինչև հիմա ահեղ ժողովուրդէն ,
խիստ զօրաւոր ու ոտքի կոխկըռ-
տող ազգէն՝ որուն երկիրը գետերը
կ'աւրեն , զօրաց Տէրոջը անուանը
տեղը՝ Սիօն լեռը ընծայ պիտի
բերուի ։

ա Սաղ. ԿԸ. 31 ; Հր. 10 ; Գլ. ԺԶ. 1 ; Սոփ. Գ. 10 ; Մաղ. Ա. 11 ;

## ԳԼ. ԺԹ

1 Եգիպտոսին խռովութիւնը . 11 անոր իշխաններուն յիմարութիւնը ։ 18 Եգիպտոս կը կանչուի եկեղեցիին յարելու ։ 23 Եգիպտոսի , Ասորեստանի և Իսրայէլի միաւորութիւնը ։

1 ա Եգիպտոսի պատգամը ։
Ահա Տէրը թեթևընթաց
բ ամպի վրայ հեծեր է , ու Եգիպ-
տոս պիտի մտնէ . և անոր երեսէն՝
գ Եգիպտոսի կուռքերը պիտի շար-
ժին , ու Եգիպտոսի սիրտը իր ներ-
2 սի դին պիտի հալի ։ դ Եւ Եգիպ-
տացիները պիտի *գրգռեմ Եգիպ-
տացիներուն վրայ , ու ամէն մէկը
իր եղբօրը հետ , և ամէն մէկը իր
ընկերին հետ , քաղաք քաղաքի
հետ , ու թագաւորութիւն թա-
գաւորութեան հետ պատերազմ
3 պիտի ընէ ։ Ու Եգիպտոսի ոգին
իր ներսի դին պիտի պակսի , և ա-
նոր խորհուրդը պիտի ցրուեմ .
ե ու անոնք կուռքերուն , կա-
խարդներուն , վհուկներուն ու
նշանագէտներուն պիտի հարցը-
4 նեն ։ Ու Եգիպտացիները զ խստա-
սիրտ տիրոջ մը ձեռքը պիտի մատ-
նեմ , և անոնց վրայ մէկ անգութ
թագաւոր մը պիտի տիրէ՝ կ'ըսէ
5 զօրաց Եհովայ Տէրը ։ Եւ է ջու-
րերը ծովէն պիտի պակսին . ու
գետը պիտի ցամքի ու չորնայ ։
6 Եւ † գետերուն ջուրերը պիտի քա-
շուին" . ու ը ‡ պարսպաւոր տեղե-
րուն" գետերը պիտի պարպուին
ու չորնան . եղէգը ու պրտուն պի-
7 տի թառամի ։ Գետին քովը , ու
գետին եզերքին վրայ եղող մար-
գագետինները , և գետին բոլոր վա-
րուցանը պիտի չորնայ , ցիրուցան
8 ըլլայ ու կորսուի ։ Ձկնորսներն
ալ պիտի հեծեն , ու գետին բոլոր
կարթընկեցները պիտի ողբան , և
ջուրին վրայ ցանց նետողները պի-
9 տի տրտմին ։ Ու թ բարակ քթան

ա Երեմ. ԽԶ. 13 ; Եզեկ. ԻԹ. Լ ;
բ Սաղ. ԺԸ. 10 ; ՃԴ. 3 ;
գ Ել. ԺԲ. 12 ; Երեմ. ԽԳ. 12 ;
դ Դատ. Է. 22 ; Ա Թագ. ԺԴ. 16 , 20 ; Բ Մն. Ի. 23 ;
* Կամ՝ սպառազինեմ
ե Գլ. Ը. 19 ; ԽԷ. 12 ;
զ Գլ. Ի. 4 ; Երեմ. ԽԶ. 26 ; Եզեկ. ԻԹ. 19 ;
է Երեմ. ԾԱ. 36 ; Եզեկ. Լ. 12 ;
† Կամ՝ գետերը պիտի հոտին .
ը Դ Թագ. ԺԹ. 24 ;
‡ Կամ՝ Եգիպտոսի
թ Առակ. Է. 16 ;

գործողները , ու ճերմակ կտաւ
10 հիւսողները պիտի ամչնան ։ Անոր
‖ սիւները պիտի կոտրտին , ու
ամէն վարձք առնողներուն հոգին
11 պիտի տրտմի ։ Իրաւ որ ժ Ցայա-
նիսի իշխանները յիմարներ են .
Փարաւոնի իմաստուն խորհրդա-
կաններուն խորհուրդը անասնա-
կան է . Ինչպէս Փարաւոնին
կրնաք ըսել թէ , Ես իմաստուն-
ներու որդի եմ . Ես հին թագա-
12 ւորներու որդի եմ ։ Ո՞ւր՝ ի ո՞ւր են
քու իմաստուններդ , որ հիմա քե-
զի պատմեն , ու § իմացընեն թէ զօ-
րաց Տէրը ինչ վճռեր է Եգիպտոսի
13 համար ։ Ցայանիսի իշխանները
յիմարեցան . լ Մեմփիսի իշխան-
ները խաբուեցան . ու Եգիպտոսը՝
իր ցեղերուն գլխաւորները մոլոր-
14 ցուցին ։ Տէրը անոր մէջը խ մոլո-
րութեան ոգի խառնեց . ու ա-
նոնք Եգիպտոսը իր ամէն գործ-
քին մէջը մոլորցուցին , ինչպէս որ
15 փսխող գինովը կը մոլորի ։ Ու
Եգիպտոսի մէջ գործք պիտի չըլ-
լայ , որ ծ գլուխ կամ պոչ ճիւղ ար-
մաւենիի ոստ , կամ կնիւն գործէ ։
16 Այն օրը Եգիպտոս՝ կ կնիկներու պէս
պիտի ըլլայ , ու պիտի դողայ և
զարհուրի զօրաց Տէրոջը ձեռքին
շարժմունքէն , հ որ պիտի շարժէ
17 անոր վրայ ։ Եւ Յուդայի երկիրը՝
Եգիպտացւոց արհաւիրք պիտի ըլ-
լայ . ով որ զանիկայ յիշէ , պիտի
վախնայ զօրաց Տէրոջը խորհուրդին
պատճառովը՝ որ անոր դէմ սահմա-
18 ներ է ։ Այն օրը Եգիպտոսի երկրին
մէջ ձ Քանանու լեզուին խօսող՝ և
զօրաց Տէրոջը անուամբը երդում
ընող՝ հինգ քաղաք պիտի ըլլայ .
մէկը ‡ Արեգ քաղաք պիտի ըսուի ։
19 Այն օրը Եգիպտոսի երկրին մէջ
ղ Տէրոջը համար սեղան , ու անոր
սահմանին քովը Տէրոջը համար
20 կոթող մը պիտի ըլլայ . Եւ ճ անի-
կայ Եգիպտացւոց երկրին մէջ՝ զօ-
րաց Տէրոջը համար նշան ու վկա-
յութիւն պիտի ըլլայ . վասն զի
բռնաւորներուն պատճառաւը Տէ-
րոջը պիտի աղաղակեն . ու անի-
կայ՝ մէկ ապատիչ ու մեծ մարդ մը
խրկելով անոնց՝ պիտի ազատէ զա-
21 նոնք ։ Եւ Տէրը Եգիպտոսի մէջ
պիտի յայտնուի , ու այն օրը՝ Ե-
գիպտացիք Տէրը պիտի ճանչնան ,
և մ զոհեր ու պատարագներ պիտի
մատուցանեն , և Տէրոջը ուխտ
22 պիտի ընեն , ու կատարեն ։ Եւ
Տէրը Եգիպտացիները պիտի զարնէ .
պիտի զարնէ , ու պիտի բժշկէ . և
անոնք Տէրոջը պիտի դառնան . ու
անիկայ պիտի ընդունի զանոնք ,
23 ու պիտի բժշկէ ։ Այն օրը Եգիպտո-

Ն. Ք. գՔ. Իրր 714
‖ Կամ՝ վարպետները
ժ Թուոց. ԺԳ. 23 ;
ի Ա Կոր. Ա. 20 ;
§ Կամ՝ գիտնան
լ Երեմ. Բ. 16 ;
խ Գ Թագ. ԻԲ. 22 ; Գլ. ԻԹ. 10 ;
ծ Գլ. Թ. 14 ;
կ Երեմ. ԾԱ. 30 ; Նաւ. Գ. 13 ;
հ Գլ. ԺԱ. 15 ;
ձ Տես Սոփ. Գ. 9 ;
‡ Կամ՝ կործանման
ղ Ծն. ԻԸ. 18 ; Ել. ԻԴ. 4 ; Յես. ԻԲ. 10 , 26 , 27 ;
ճ Տես Յես. Դ. 20 ; ԻԲ. 27 ;
մ Մաղ. Ա. 11 ;

Ն․ Ք․ ԳՔ․ Իրր 714

սէն դէպ 'ի Ասորեստան ճամբայ պիտի ըլլայ, ու Ասորեստանցիք Եգիպտոս՝ ու Եգիպտացիք Ասորեստան պիտի երթան. ու Եգիպտացիք * Ասորեստանցւոց հետ
24 Աստուծոյ պիտի ծառայեն։ Ան օրը Իսրայէլը երրորդ պիտի ըլլայ Եգիպտոսի ու Ասորեստանի հետ. ու երկրին մէջ օրհնութիւն պիտի
25 ըլլայ։ Քանզի զօրաց Տէրը զանիկայ պիտի օրհնէ, ու պիտի ըսէ. Օրհնեա՛լ ըլլայ իմ ժողովուրդս՝ Եգիպտոսը, ու իմ ձեռքերուս գործը՝ Ասորեստանը, և իմ ժառանգութիւնս՝ Իսրայէլը։

ԳԼ. Ի

1—6 Եգիպտոսի ու Եթէովպիայի ամօթալից գերութիւնը նշանակող օրինակ մը։

1 Ան տարին որ Թարաթանը Ասորեստանի Սարգոն թագաւորէն
խրկուելով՝ Ազովտոս գնաց, ու Ազովտոսի հետ պատերազմ ըրաւ,
2 ու զանիկայ առաւ, Ան ժամանակը Տէրը՝ Ամովսի որդւոյն Եսայիին ձեռքովը խօսեցաւ, ըսելով. Գնա՛ մէջքէդ քուրձդ հանէ, ու ոտքեդ կօշիկներդ հանէ. ու անիկայ այնպէս ըրաւ. և մերկ ու բոկոտն կը
3 շրջէր։ Եւ Տէրը ըսաւ. Ինչպէս որ իմ ծառաս Եսային երեք տարի մերկ ու բոկոտն շրջեցաւ, որ Եգիպտոսի համար, ու Եթէովպիայի
4 համար նշան ու ցոյց մըն է, Այնպէս ալ Ասորեստանի թագաւորը Եգիպտացիները գերի՝ ու Եթէովպացիները աքսոր պիտի տանի, երիտասարդները ու ծերերը մերկ՝ բոկոտն և իրենց ամօթոյքը բաց, Եգիպտոսի նախատինք ըլլալու հա-
5 մար։ Ու անոնք պիտի սոսկան ու ամչնան Եթէովպիայէն՝ որ իրենց ապաւէնն էր, ու Եգիպտոսէն՝ որ
6 իրենց փառքն էր։ Եւ ան օրը աս ծովեզերեայ երկրին բնակիչները պիտի ըսեն. Ահա՛ այսպէս եղաւ մեր ապաստանարանը՝ որ մենք Ասորեստանի թագաւորին երեսէն ազատելու համար, ու օգնութիւն գտնելու համար հոն փախանք. ուրեմն մենք ի՞նչպէս պիտի ազատինք։

ԳԼ. ԻԱ

1 Մարգարէին տեսիլքով կը յայտնուի թէ Բաբելոնը Մարաց և Պարսից ձեռքովը պիտի իյնայ։ 11 Եդովմի վրայ պատգամ մը։ 13 Արաբացւոց թշուառութեանը որոշուած ժամանակը։

1 Ծովու անապատին պատգամը։
Հարաւէն յարձակող մրրիկներուն պէս՝ անիկայ անապատէն՝
2 սոսկալի երկրէն կու գայ։ Ինծի մէկ վշտալի տեսիլք մը յայտնուեցաւ. Յափշտակողը կը յափշտակէ, ու կործանողը կը կործանէ. Ո՛վ Եղամացիք՝ վե՛ր ելէք. ո՛վ Մարք՝ պաշարեցէ՛ք. անոր պատճառած բո-
3 լոր հառաչանքը դադրեցուցի։ Անոր համար երիկամունքս ցաւով լեցուեցաւ. ու ծննդական կնոջ ցաւերուն պէս՝ ցաւեր բռնեց զիս. տանանկ կծկուած եմ՝ որ չեմ կրնար լսել. անանկ խռովուած եմ՝ որ չեմ
4 կրնար տեսնել։ Սիրտս շփոթեցաւ, արհաւիրքը զիս դողացուց. իմ ուրախութեանս գիշերը ինծի սրտադողի փոխ ըրաւ։
5 Սեղանը կը պատրաստեն. դէտերը կը դնեն. կ'ուտեն կը խմեն։ Ելէ՛ք ո՛վ իշխաններ, վահանները
6 օծեցէ՛ք։ Քանզի Տէրը ինծի այսպէս ըսաւ. Գնա մէկ դէտ մը դիր,
7 որ տեսածը զրուցէ։ Եւ անիկայ հեծեալներ տեսաւ, երկու ձիաւոր, ու էշերու վրայ հեծածներ, և ուղտերու վրայ հեծածներ, և ուշադրութեամբ՝ մեծ ուշադրու-
8 թեամբ մտիկ ըրաւ, Ու առիւծի պէս աղաղակեց. Ո՛վ տէր՝ ես ցորեկը միշտ իմ դիտանոցիս մէջը կը կայնիմ, ու բոլոր գիշերը իմ պահպանութեանս տեղը կը կե-
9 նամ. Եւ ահա հեծնող մարդիկներ, երկու ձիաւոր կու գան. Նաև պատասխան տուաւ, ու ըսաւ. Ինկաւ Բաբելոնը, ինկաւ. ու անոր աստուածներուն բոլոր արձանները կոտրտեցան ու գետինը
10 նետուեցան։ Ո՛վ իմ կոխուածներս ու իմ կալիս ցորենը, ես ձեզի պատմեցի ինչ որ լսած եմ զօրաց Տէրոջմէն՝ Իսրայէլի Աստուծմէն։
11 Եդովմի պատգամը։
Սէիրէն ձայն մը կու գայ ինծի. Ո՛վ պահապան՝ գիշերուան համար ի՞նչ, ո՛վ պահապան՝ գիշերուան
12 համար ի՞նչ լուր կայ։ Պահապանը կ'ըսէ. Առաւօտը կու գայ ու նաև գիշերը. թէ որ կ'ուզէք հարցնել, հարցուցէ՛ք. դարձէ՛ք, ու եկէ՛ք։
13 Արաբիայի պատգամը։
Արաբիայի անտառին մէջ գիշերը պիտի անցընէք, ո՛վ Դեդա-
14 նացւոց կարաւանները։ Ո՛վ Թեմայի երկրին բնակիչները՝ ծարաւին առջևը ջուրով ելէք, ու փախըստականին առջևը հացով եկէք։
15 Վասն զի անոնք կը փախչին սուրերուն առջևէն, քաշուած սուրին առջևէն, ու լարուած աղեղին առջևէն, և սաստիկ պատերազմին
16 առջևէն։ Քանզի Տէրը ինծի այսպէս ըսաւ. Մէկ տարուան մէջ՝ վարձկանի տարիներուն պէս՝ Կե-

Ն․ Ք․ ԳՔ․ Իրր 714

Ն. Ք. ԴՔ.
Եւր 714

դարի բոլոր փառքը պիտի վերջա-
17 նայ . Ու աղեղնաւորներուն մնա-
ցած թիւը՝ Կեդարի որդւոց զօ-
րաւորները պիտի քիչնան . քանզի
Իսրայէլին Տէր Աստուածը խօսե-
ցաւ ։

Ն. Ք. ԴՔ.
Եւր 712

կը խմէիք , ըսելով . ᵇ Ուտենք ու
խմենք , քանզի վաղը պիտի մեռ-
14 նինք ։ ᶜ Բայց զօրաց Տէրոջը կող-
մանէ իմ ականջներուս յայտնուե-
ցաւ որ անշուշտ աս անօրէնութիւ-
նը ձեզի պիտի չթողուի , մինչև որ
դուք մեռնիք , կ՚ըսէ զօրաց Եհո-
վայ Տէրը ։

ᵇ Գլ. ծզ. 12 ։ ա Կոր. ժե. 32 ։
ᶜ Գլ. ե. 9 ։
Յ Թագ. դ. 14 ։ Եզեկ. իդ. 13 ։

15 Զօրաց Եհովայ Տէրը այսպէս ը-
սաւ . Գնա՛ , ու ᵈ պալատին հրամա-
նատարին՝ ᵉ Սեբնա * գանձապետին
16 քովը մտիր , ու ըսէ . Դուն հոս
ի՞նչ ունիս , և հոս ո՞վ ունիս , որ
հոս քեզի գերեզման փորեցիր , ով
դուն՝ որ քու գերեզմանդ բարձր
տեղ կը փորես , ու քեզի վէմի մէջ
17 բնակարան կը շինես ։ Ահա՛ Տէրը
քեզ պիտի նետէ մէկ զօրաւոր նե-
տուածքով մը ; ᶠ և քեզ բոլորովին
18 պիտի ծածկէ ։ Անշուշտ գնտակի
պէս մէկ լայնատարած երկիր մը
պիտի գլորէ քեզ . դուն հոն պի-
տի մեռնիս , և քու փառացդ կառ-
քերը հոն պիտի մնան , † ո՛վ քու
19 տիրոջդ տանը անարգանքը . Ու
քու պաշտօնէդ քեզ պիտի վռնտ-
տեմ , և քու աստիճանէդ քեզ պի-
20 տի զրկեմ ։ Ու ան օրը պիտի կան-
չեմ իմ ծառաս՝ Քեղկիայի որդին
21 ᵍ Եղիակիմը , Ու քու պատմուճանդ
անոր պիտի հագցընեմ , ու քու
գօտիովդ անիկայ պիտի զօրացը-
նեմ , և քու իշխանութիւնդ անոր
ձեռքը պիտի տամ . ու անիկայ
Երուսաղէմի բնակիչներուն , ու
Յուդայի տանը՝ հօր պէս պիտի ըլ-
22 լայ ։ Ու Դաւիթի տանը բանալին
անոր ուսին վրայ պիտի դնեմ , որ
անիկայ ʲ բանայ , և գոցող չըլլայ ,
23 ու գոցէ , և բացող չըլլայ ։ Ու
զանիկայ մէկ հաստատ տեղ մը
ᵏ բևեռի պէս պիտի գամեմ . և ա-
նիկայ իր հօրը տանը՝ փառաւոր ա-
24 թոռի պէս պիտի ըլլայ ։ Ու անոր
հօրը տանը բոլոր փառքը անոր վը-
րայ պիտի կախուի , անոր սերուն-
դէն եղող պատուականները ու ա-
նարգները , ամէն պզտիկամանները՝
տեսակ տեսակ թասերէն մինչև ա-
25 մէն տեսակ ‡ տիկերը ։ Ան օրը՝
կ՚ըսէ զօրաց Տէրը , ˡ հաստատ
տեղը գամուած բևեռը պիտի վեր-
ցուի , և պիտի կոտրի ու իյնայ .
ու վրան եղած բեռը պիտի կոտըր-
տի . քանզի Տէրը խօսեցաւ ։

ᵈ Դ Թագ. դ. 6 ։
ᵉ Դ Թագ. ժը. 37 ։ Գլ. լզ. 3 ։
* Կամ՝ առաջին պաշտօնատարին
ᵍ Դ Տեղ Բ Թագ. ժը. 18 ։ Մատ. իէ. 60 ։
ᶠ Եսթ. է. 8 ։
† Կամ՝ խը-
րէտ
ʲ Դ Թագ. ժը. 18 ։
ʲ Յոբ. ժբ. 14 ։ Յայտ. դ. 7 ։
ᵏ Եզր. թ. 8 ։
‡ Կամ՝ սափորները , խուլ՝ նուագարանները ։

## ԳԼ . ԻԲ

1 Պարսից Հրէաստանի վրայ յարձակելուն համար՝ մարգարէն կ՚ողբայ . 8 իր հայրենակիցներուն մարդկային իմաստութիւնը և աշխարհային ուրախութիւնը կը յանդիմանէ . 15 կը մարգարէանայ թէ Սեբնա իր պաշտօնէն պիտի զրկուի , 20 ու Եղիակիմ՝ որ Քրիստոսի թագաւորութեանը օրինակ մըն էր , անոր տեղը պիտի անցնի ։

Եւր 712

1 Տեսիլքի ձորին պատգամը ։
Հիմա քեզի ի՞նչ եղաւ , որ
ամէնքդ տանիքներու վրայ ելար ։
2 Ո՛վ խռովութեամբ լեցուած աղ-
մուկի քաղաք՝ ᵃ զբօսասէր քաղաք ,
քու վիրաւորներդ սրով վիրաւո-
րուած չեն , ու պատերազմի մէջ
3 չմեռան ։ Բոլոր իշխաններդ մէ-
կէն փախան . աղեղնաւորներէն
կապուեցան . քու ծով ... ւորդ
հեռու փախչողներէն բոլոր գըտ-
նուածները մէկտեղ կապուեցան ։
4 Անոր համար ըսի . Թող տուէ՛ք զիս ,
որ ᵇ դառնապէս լամ . իմ ժողո-
վուրդիս աղջկանը կործանումին
համար զիս մխիթարելու մի՛ աշ-
5 խատիք ։ Քանզի տեսիլքի ձորին
մէջ՝ ᶜ զօրաց Եհովայ Տէրոջմէն
ᵈ խռովութեան , կոխման ու շփո-
թութեան օր է . պարիսպը կը
փլցընեն , և աղաղակը մինչև լեռը
6 կը հասնի ։ ᵉ Ու Եղամը իր ձիաւոր
մարդիկներովը կապարճը վերցուց .
7 և ᶠ Կիրը վահանը բացաւ . Եւ քու
ընտիր հովիտներդ կառքերով լեց-
ցուեցան . ու ձիաւորները դունդ
8 կազմեցին դռներուն քովը . Եւ
Յուդային ծածկոցը բացուեցաւ .
ու ան օրը ᵍ անտառի տանը զէնքե-
9 րուն նայեցաք . Եւ ʰ Դաւիթի քա-
ղաքին փլած տեղերուն շատ ըլլա-
լը տեսաք , ու վարի աւազանին
10 ջուրերը ժողվեցիք . Ու Երուսա-
ղէմի տուները համրեցիք , և պա-
րիսպը ամրացընելու համար տու-
11 ները փլցուցիք . ⁱ Ու հին աւազա-
նին ջուրերուն համար՝ երկու պա-
րըսպին մէջտեղը ջրակոյտ մը շի-
նեցիք , բայց ʲ զանիկայ շինողին
չնայեցաք , ու շատոնցմէ զանի-
կայ կազմողին ուշադրութիւն չը-
12 րիք ։ Եւ ան օրը զօրաց Եհովայ
Տէրը ᵏ լալու կանչեց լալու ու սգա-
լու , ˡ գլուխ կնտացընելու , և քուրձ
13 հագնելու . Եւ ահա՛ ցնծութիւն
ու ուրախութիւն ըրիք . արջառներ
կը սպաննէիք և ոչխարներ կը մոր-
թէիք . միս կ՚ուտէիք , ու գինի

ᵃ Գլ. լբ. 13 ։
ᵇ Երեմ. գ. 19 ։ թ. 1 ։
ᶜ Ողբ. ա. 5 ։ բ. 2 ։
ᵈ Գլ. լէ. 3 ։
ᵉ Երեմ. խթ. 35 ։
ᶠ Գլ. ժե. 1 ։
ᵍ Գ Թագ. է. 2 ։ ժ. 17 ։
ʰ Դ Թագ. ի. 20 ։ Բ Մն. լբ. 4 , 5 , 30 ։
ⁱ Նէեմ. գ. 16 ։
ʲ Տես Գլ. լէ. 26 ։
ᵏ Յովել. ա. 13 ։
ˡ Տես Եզր. թ. 3 ։ Գլ. ժե. 2 ։ Միք. ա. 16 ։

## ԳԼ . ԻԳ

1 Տիւրոսին ողբալի կործանումը . 17 անոր ըրնակչացը գերեզարձութիւնը ։

Եւր 715

1 ᵃ Տիւրոսի պատգամը ։
Ողբացէ՛ք՝ ո՛վ Թարսիսի նա-
ւեր . քանզի անիկայ բնաջինջ ե-
ղաւ . հոն տուն կամ ‖ դուռ չը-

ᵃ Երեմ. իե. 22 ։ խէ. 4 ։ Եզեկ. իզ. իէ. իը ։ Ամով. ա. 9 ։ Զաք. թ. 2 , 4 ։
‖ Եբր. մուտք

Ն ․ Ք ․ ԴՔ ․ ԻԲԲ 715

մնաց ․ ասկէ Քիտտացւոց երկրէն
2 յայտնուեցաւ անոնց ։ Ո՛վ կղզիի
բնակիչներ՝ լռեցէ՛ք ․ ծովէ անցնող
Սիդոնացւոց վաճառականները լե-
3 ցուցեր էին քեզ ։ Եւ շատ ջուրե-
րու մէջ գտնուող *Սիովրի հունտե-
րը՝ գետին հունձքը՝ անոր եկա-
մուտն էր ․ ու †անիկայ ազգերուն
4 վաճառանոցն էր ։ Ո՛վ Սիդոն՝
ամչցի՛ր ․ քանզի ծովը կը խօսի ․
ծովուն զօրութիւնը կը խօսի ու կ՚ը-
սէ ․ Ես ծննդականի ցաւ չեմ քա-
շեր , ու չեմ ծնանիր ․ երիտա-
սարդներ չեմ սնուցաներ , ու կոյս
5 աղջիկներ չեմ մեծցըներ ։ ‡Երբոր
ասոր համբաւը Եգիպտացւոց ականջը
հասնի , Տիւրոսի լուրին համար
6 պիտի տագնապին ։ Թարսիս ան-
ցէ՛ք ․ ո՛վ §ծովեզերքի բնակիչներ՝
7 ողբացէ՛ք ։ Ձեր ‖ուրախութեան
քաղաքը ասիկա՞յ է , որուն հնութիւ-
նը շատոնցմէ է ․ անոր ոտքերը՝
հեռու տեղ պանդուխտ ըլլալու
8 պիտի տանին զանիկայ ։ Ո՞վ աս
խորհուրդը ըրաւ Տիւրոսի դէմ ,
¶որ իր թագաւորները կը պսակէր ․ անոր
վաճառականները իշխաններ էին ,
ու առուտուր ընողները՝ երկրիս
9 պատուաւոր մարդիկները ։ Զօրաց
Տէրը աս խորհուրդը ըրաւ , որ ա-
մէն փառքին ամբարտաւանութիւ-
նը խայտառակէ , ու երկրիս բոլոր
պատուաւորները անարգէ ։
10 Ո՛վ Թարսիսի աղջիկը՝ քու տե-
ղէդ գետի պէս անցի՛ր ․ ասկէ ետքը
11 **գօտի չկայ ։ Իր ձեռքը ծովուն
վրայ երկընցուց ․ թագաւորու-
թիւնները սարսեց ․ Տէրը Քանա-
նացւոց համար հրամայեց , որ ա-
12 նոր բերդերը աւրեն ․ Ու ըսաւ
††Դուն մէյ մըն ալ պիտի չուրախա-
նաս ո՛վ Սիդոնի անարգուած կոյս
աղջիկը ․ ելի՛ր ‡‡Կիտիմ անցի՛ր ․
բայց հոն ալ հանգստութիւն պի-
13 տի չունենաս ։ Ահա Քաղդէացւոց
երկիրը որ աս ժողովուրդ չէր
զանիկայ Ասորեստանցիք հիմնեցին
§§անապատի բնակիչներուն համար ․
անոր աշտարակները կանգնեցին ․
անոր պալատները շինեցին ․ բայց
անիկայ հիմա աւերակ ըրաւ ասի-
14 կայ ․ ‖‖Ողբացէ՛ք ո՛վ Թարսիսի նա-
ւեր ․ վասն զի ձեր զօրութիւնը
կորսուեցաւ ։
15 Եւ այն օրը Տիւրոսը մոռցուած
պիտի մնայ եօթանասուն տարի՝
մէկ թագաւորի օրերուն չափ ․ ու
եօթանասուն տարիէն ետքը՝ երգ մը
պիտի երգեն Տիւրոսին՝ պոռնիկի
16 երգին պէս ․ Ո՛վ մոռցուած պոռ-
նիկ՝ քնարը ա՛ռ , ու քաղաքին մէջը
պտըտէ ․ աղէկ զարկ , շատ խա՛ղ
17 կանչէ որ քեզ յիշեն ։ Ու եօ-
թանասուն տարիէն ետքը՝ Տէրը
այցելութիւն պիտի ընէ Տիւրոսին ․
և անիկայ իր շահին պիտի դառնայ ,
ու աշխարհիս երեսը եղող բոլոր
երկրիս թագաւորութիւններուն
հետ *պոռնկութիւն պիտի ընէ ։
18 Եւ անոր ‖վաճառականութեան
շահը՝ Տէրոջը պիտի նուիրուի ․
անիկայ գանձատունը պիտի չդրուի ,
կամ շտեմարանի մէջ պիտի չպա-
հուի ․ հապա անոր վաճառակա-
նութեան շահը՝ Տէրոջը առջեւը
բնակողներուն պիտի ըլլայ , որ
մինչև կշտանալնին ուտեն , ու պա-
տուական զգեստներ հագնին ։

Left margin: Բ Հմր 12 ։ — * Կամ՝ Նեղոսի — † Եզեկ ․ ԻԷ ․ 3 ։ — ‡ Գլ ․ ԺԹ ․ 16 ։ — § Կամ՝ կղզիի Ե Գլ ․ Իր ․ 2 ։ — ¶ Տես Եզեկ ․ ԻԸ ․ 2 , 12 ։ — ** Կամ՝ արգելք — †† Յայտ ․ ԺԸ 22 ։ — ‡‡ Հմր 1 ։ — §§ Սաղ ․ Հբ ․ 9 ։ — ‖‖ Հմր 1 ։ Եզեկ ․ ԻԷ ․ 25 ․ 30 ։

Right margin: Ն ․ Ք ․ ԴՔ ․ ԻԲԲ 715 — * Յայտ ․ ԺԷ ․ 2 ։ — ‖ Եբր ․ վաճառականութիւնը ու շահը — Լ Զաք ․ ԺԴ ․ 20 , 21 ։

## ԳԼ ․ ԻԴ

1 Երկրին վրայ Աստուծոյ բերած ցաւագին դատաստանները ։ 13 Իսրայէլին մէկ մնացորդը ուրախութեամբ պիտի գովէ զԱնիկայ ։ 16 Աստուած իր դատաստաններովը պիտի բարձրացընէ իր թագաւորութիւնը ։

1 Ահա՛ Տէրը երկիրը կը պարպէ , ու
զանիկայ կը դատարկացընէ , և
տակնուվրայ ընելով՝ անոր բնակիչ-
2 ները կը ցրուէ ։ Ու ինչպէս է
ժողովուրդը՝ *քահանան ալ այն-
պէս , ինչպէս է ծառան՝ իր տէրն
ալ այնպէս , ինչպէս է աղախինը՝
իր տիկինն ալ այնպէս , †ինչպէս է
ծախու առնողը՝ ծախողն ալ այն-
պէս , ինչպէս է փոխ տուողը՝ փոխ
առնողն ալ այնպէս , ինչպէս է տո-
կոսիք առնողը՝ տոկոսիք տուողն
3 ալ այնպէս պիտի ըլլայ ։ Երկիրը
բոլորովին պիտի պարպուի , ու բո-
լորովին պիտի կողոպտուի ․ քանզի
4 աս խօսքը Տէրը խօսեցաւ ։ Երկիրը
սուգ կը բռնէ , ու կը մարի ․ աշ-
խարհս կը նուաղի ու կը մարի ․
երկրիս ժողովուրդին մեծերը կը
5 նուաղին ։ Ու ‡երկիրը իր բնակիչ-
ներուն տակը պղծուեցաւ ․ քանզի
անոնք օրէնքները զանց ըրին , պա-
տուիրանքը փոխեցին , յաւիտե-
6 նական ուխտը խափանեցին ։ Աս
պատճառաւ §անէծքը կերաւ եր-
կիրը ․ ու անոր մէջը բնակողները
իրենց յանցանքին պատիժը կրե-
ցին ․ աս պատճառաւ երկրին բնա-
կիչները այրեցան , ու քիչ մարդիկ
7 մնացին ։ ‖Նոր գինին սուգ կը
բռնէ ․ որթը կը նուաղի ․ ու ամէն
ուրախասիրտ եղողները կը հառա-
8 չեն ։ ¶Թմբուկներուն ցնծութիւնը
կը դադարի ․ ուրախութիւն ընող-
ներուն աղաղակը կը կտրի ․ քնարին
9 ցնծութիւնը կը դադարի ։ Երգով
գինի պիտի չխմեն ․ ցքին՝ խմողնե-
10 րուն դառն պիտի ըլլայ ։ Դատարկ
քաղաքը կործանեցաւ ․ ամէն տուն
գոցուեցաւ , որ մարդ մը չմտնէ ։
11 Փողոցներուն մէջ գինիի համար ա-

Right margin: ԻԲԲ 712 — * Ովս ․ Դ ․ 9 ։ — † Եզեկ ․ Է ․ 12 , 13 ։ — ‡ Ծն ․ Գ ․ 17 ։ Թուոց ․ ԼԵ ․ 33 ։ — § Մաղ ․ Դ ․ 6 ։ — ‖ Գլ ․ ԺԶ ․ Ց ․ 9 ։ Յովէլ ․ Ա ․ 10 , 12 ։ — ¶ Երեմ ․ Է ․ 34 ։ ԺԶ ․ 9 ։ ԻԵ ․ 10 ։ Եզեկ ․ ԻԶ ․ 13 ։ Ովս ․ Բ ․ 11 ։ Յայտ ․ ԺԸ ․ 22 ։

Ն. Ք. ԳԲ. ԻՐ 712

ղաղակ կայ . ամէն ուրախութիւնը
մթընցաւ . երկրին ցնծութիւնը
12 վերցաւ ։ Քաղաքին մէջը ամայու-
թիւն մնաց . ու դուռը զարնուե-
13 ցաւ , ու աւերակ եղաւ ։ Քանզի
երկրին մէջ՝ ժողովուրդոց մէջը՝
ե թօթվուած ձիթենիի պէս , ու
այգեկութէն ետքը՝ ճռաքաղին
14 պէս պիտի ըլլայ ։ Անոնք ձայ-
ներնին վերցընելով՝ ցնծութեամբ
պիտի երգեն . ծովու կողմէն Տէ-
րոջը փառքին համար բարձրաձայն
15 պիտի աղաղակեն ։ Անոր համար
*արեւելեան կողմը՝ փառաւորեցէ՛ք
Տէրը , ծովու կղզիներուն մէջ
ըԻսրայէլի Տէր Աստուծոյն անու-
16 նը ։ Երկրի ծայրերէն օրհնու-
թիւններ լսեցինք . արդարին
փա՛ռք մատուցէք . բայց ես ըսի .
Նիհա՛ր եմ , նիհա՛ր եմ . վա՜յ ինծի .
յափշտակողները կը յափշտակեն .
յափշտակողները բռնի կը յափըշ-
17 տակեն ։ Ո՛վ երկրին բնակիչը՝
ըվախ , գուբ և որոգայթ պիտի ըլ-
18 լայ քու վրադ . Ու վախին ձայնէն
փախչողը՝ գուբը պիտի իյնայ , և
գուբին մէջէն ելլողը՝ որոգայթին
մէջը պիտի բռնուի . քանզի ծբարձ-
րէն †պատուհանները բաց են , ու
19 եերկրին հիմերը կը շարժին ։ ւԵր-
կիրը բոլորովին կը ճնշուի . երկիրը
բոլորովին կը պատռի . երկիրը բո-
20 լորովին կը սարսի . Երկիրը եգի-
նովի պէս անդադար պիտի երերայ ,
ու հիւղի պէս պիտի շարժի . և ա-
նոր մեղքը պիտի ծանրանայ անոր
վրայ . ու անիկայ պիտի իյնայ , ու
21 մէյմըն ալ պիտի չելլէ ։ Եւ ան
օրը Տէրը բարձրէն այցելութիւն
պիտի ընէ հպարտներուն զօրքին ,
ծու երկրիս վրայ՝ երկրիս թագա-
22 ւորներուն ։ Եւ անոնք պիտի ժող-
վուին , ինչպէս որ բանտարկեալ-
ները գուբին մէջ կը ժողվուին , ու
բանտի մէջ պիտի գոցուին . և շատ
ատենէն ետքը անոնց այցելութիւն
23 պիտի ըլլայ ։ Եւ լուսինը պիտի
ամչնայ , ու արեւը պիտի պատկա-
ռի , երբոր զօրաց Տէրը՝ հՍիոն լե-
ռանը վրայ՝ ու Երուսաղէմի մէջ
յթագաւորէ , ու իր ծերերուն առ-
ջեւը փառաւորուի ։

Ն. Ք. ԳԲ. ԻՐ 712 — Ե Գլ. ԺԷ. 5, 6 . * Եբր. Լոյսերուն մէջ . ը Մաղ. Ա. 11 . ը Տես Գաղ. ԺԹ. 17 ։ Երեմ. ԽԸ. 43, 44 ։ Ամով. Ե. 19 . ծ Ծն. Է. 11 ։ † Կամ՝ սահանները . ե Սաղ. ԺԸ. 7 ։ ւ Երեմ. Դ. 23 ։ ե Գլ. ԺԹ. 14 . ծ Սաղ. ՃԼ. 12 . հ Գլ. ԺԳ. 10 ։ Կ. 19 ։ Եզեկ. Լը. 7 ։ Յովէլ. Բ. 31 ։ Գ. 15 . հ Եբր. ԺԲ. 22 . յ Յայտ. ԺԹ. 4, 6 .

## ԳԼ. ԻԵ

1 Մարգարէն զԱստուած կը գովաբանէ իր դատաստաններուն համար , 6 իր փրկարար շնորհացը համար , 9 և յաղթող փրկութեանը համար ։

1 Ո՛վ Տէր՝ իմ Աստուածս դուն ես .
աքեզ պիտի բարձրացընեմ , քու
անուանդ փառք պիտի տամ .
բքանզի սքանչելի բաներ ըրիր . Հքու
վաղեմի խորհուրդներդ հաւատա-
2 րիմ և ճշմարիտ են ։ Քանզի Դքա-
ղաքը՝ հողակոյտ , ու պարսպաւոր
քաղաքը՝ աւերակ դարձուցիր , որ
օտարներուն քաղաք չըլլալով , օտա-
րականներուն պալատը յաւիտեան
3 չշինուի ։ Անոր համար զօրաւոր
ժողովուրդը եքեզ պիտի պատուէ ,
և ահարկու ազգաց քաղաքը քեզմէ
4 պիտի վախնայ ։ Վասն զի դուն
ապաւէն եղար աղքատին , ապաւէն
չքաւորին՝ իր նեղութեան ատենը ,
Զապաստանարան՝ փոթորիկէն , հո-
վանի՝ տաքութենէն , երբոր անօրէն
մարդոց կատաղութիւնը պատ քըն-
ցընող փոթորիկի պէս կու գայ ։
5 Օտարականներուն աղաղակը չոր
տեղւոյն տաքութեանը պէս պիտի
խոնարհեցընես . ինչպէս որ տաքու-
թիւնը ամպի հովանիով կ՚իջնէ , ա-
նանկ ալ բռնաւորներուն ցնծու-
թեան ձայնը պիտի ցածնայ ։
6 Եւ եզօրաց Տէրը Լաս լեռանս
վրայ Ըբոլոր ազգերուն կոչունք մը
պիտի ընէ , պարարտ բաներու և հին
գինիներու , ծուծով լեցուած պա-
րարտ բաներու , ու զտուած հին
7 գինիներու կոչունք ։ Եւ աս լե-
ռանս վրայ՝ ամէն ժողովուրդներուն
վրայ տարածուած ծածկոցը , ու
ծամէն ազգերուն վրայ փռուած վա-
րագոյրը բնաջինջ պիտի ընէ ։
8 եՄահը ‡յաւիտեան բնաջինջ պիտի
ընէ , ու Տէր Եհովան ւամէն ‖աչ-
քէ արցունքը պիտի սրբէ , և բոլոր
երկրիս երեսէն իր ժողովուրդին
նախատինքը պիտի վերցընէ . վասն
զի Տէրը խօսեցաւ ։
9 Ու ան օրը պիտի ըսեն . Ահա՛ մեր
Աստուածը ասիկայ է . եանոր յու-
սացանք , ու անիկայ մեզ ազատեց .
Տէրը ասիկայ է . անոր յուսացանք .
ծանոր փրկութիւնովը պիտի ցըն-
10 ծանք և ուրախանանք ։ Քանզի
Տէրոջը ձեռքը աս լեռանս վրայ
պիտի հանգչի , ու Մովաբը անոր
տակը պիտի կոխուի , ինչպէս որ
յարդը կը կոխուի աղբանոցին մէ-
11 ջը ։ Եւ իր ձեռքերը պիտի տա-
րածէ անոր մէջը , ինչպէս որ լողա-
ցողը կը տարածէ լողալու համար .
ու անոր հպարտութիւնը՝ անոր
ձեռացը հնարքներուն հետ պիտի
12 կործանէ ։ Եւ լքու բարձր պա-
րիսպներուդ ամրութիւնը պիտի
խոնարհեցընէ , ու գետնի հետ հա-
ւասարելով՝ փոշիի մէջ պիտի ձգէ ։

## ԳԼ. ԻԶ

1 Աստուծոյ վստահելու յորդորող երգ մը . 5 իր դատաստաններուն համար , 12 և իր ժողովուրդին իր ըրած շնորհքին համար ։ 20 Աստուծոյ սպասելու յորդորանք մը ։

1 աՆն օրը Յուդայի երկրին մէջ աս
երգը պիտի երգեն .

ա Ել. ԺԵ. 2 ։ Սաղ. ՃԺԸ. 28 ։ բ Սաղ. ՂԸ. 1 ։ Հ Թուէ. ԻԴ. 19 ։ Ն. Ք. ԳԲ. ԻՐ 712 — Դ Գլ. ԻԱ. 9 ։ ԻԳ. 13 ։ Երեմ. ԾԱ. 37 . ե Յայտ. ԺԱ. 13 . Զ Գլ. Դ. 6 . ե Առակ. Թ. 2 ։ Մատ. ԻԲ. 4 ։ Ը Գլ. Բ. 2, 3 ։ Ը Դան. Է. 14 ։ Մատ. Ը. 11 . ծ Բ Կոր. Գ. 15 ։ Եփե. Դ. 18 ։ ե Ովս. ԺԳ. 14 ։ Ա Կոր. ԺԵ. 54 ։ Յայտ. Ի. 14 ։ ԻԱ. 4 ։ ‡ Կամ՝ յաղթութեան մէջ . ւ Յայտ. Է. 17 ։ ԻԱ. 4 ։ ‖ Եբր. երեսէ . ե Ծն. ԽԹ. 18 ։ Տիտ. Բ. 13 ։ ծ Սաղ. Ի. 5 ։ լ Գլ. ԻԶ. 5 . ա Գլ. Բ. 11 .

Ն․ Ք․ Զ․ Ե՛՛ 712
ա Գլ․ Կ․ 18։
բ Սաղ․ ՃԺԸ․ 19, 20։
գ Գլ․ Խե․ 17։
դ Գլ․ Իե․ 12։ ԼԲ․ 19։
ե Սաղ․ ԼԷ․ 23։
զ Գլ․ Կգ․ 5։
է Սաղ․ Կզ․ 6։ Երգ․ Գ․ 1։
* Եբր․ իմ ներսիդիս եղած հոգիովս․
ը Ժող․ Ը․ 12։ Հռով․ Բ․ 4։
թ Սաղ․ ՃԽԳ․ 10։
ժ Յոբ․ ԼԴ․ 27։ Սաղ․ ԻԸ․ 5։ Գլ․ Ե․ 12։
ի Մն․ ԺԲ․ 8։
լ Ովս․ Ե․ 15։
† Կամ՝ հառաչանք թափեցին։
խ Գլ․ Ժզ․ 8։ Յով․ Ժզ․ 21։

Մենք զօրաւոր քաղաք ունինք ․
ա փրկութիւնը պարիսպներու ու
պատնէշներու տեղ կը դրուի ։
2 բԴռները բացէ՛ք , որ ճշմարտու֊
թիւն պահող արդար ազգը ներս
3 մտնէ ։ Հաստատ միտքը կատա֊
րեալ խաղաղութեան մէջ կը պա֊
հես ․ ինչու որ քեզի կը յուսայ ։
4 Յաւիտեան Տէրո՛ջը յուսացէք ․
գքանզի Տէր Եհովան յաւիտենա֊
5 կան վէմ է ։ Քանզի անիկայ բար֊
ձըր տեղուանք բնակողները կը խո֊
նարհեցընէ ․ դբարձր քաղաքը կը
ցածցընէ , մինչև գետինը կը ցած֊
ցընէ ․ զանիկայ հողի հետ հաւա֊
6 սար կ'ընէ ։ Ոտքը զանիկայ պիտի
կոխէ , աղքատին ոտքը ու չքաւոր֊
7 ներուն գարշապարը ։ Արդարին
ճամբան շիտակ է ․ եդո՛վ Ուղիղդ՝
արդարին ճամբան դուն կ'ուղղես ։
8 Եւ զքու դատաստաններուդ ճամ֊
բուն մէջը քեզի կը սպասենք՝ ով
Տէր ․ մեր հոգիին փափաքը՝ քու
անուանդ և քու յիշատակիդ վրայ
9 է ։ էԳիշերը փափաքեցայ քեզի
հոգւովս , ու առաւօտուն քեզ կը
փնտռեմ *բոլոր սրտովս” ․ քանզի
երբոր քու դատաստաններդ երկ֊
րիս վրայ ըլլան , աշխարհի բնա֊
կիչները արդարութիւն պիտի սոր֊
10 վին ։ ըԱմբարշտին ողորմութիւն
ալ ըլլայ՝ արդարութիւն չսորվիր ․
անիկայ թուղղութեան երկրին մէջ
անօրէնութիւն կը գործէ , ու Տէ֊
րոջը մեծափառութիւնը չտեսներ ։
11 Ո՛վ Տէր՝ ժանոնք քու ձեռքիդ բարձ֊
րանալը իչեն տեսներ ․ բայց ժողո֊
վուրդին վրայ քու ունեցած նա֊
խանձդ պիտի տեսնեն , ու ամչնան ․
և քու թշնամիներդ կրակը պիտի
12 սպառէ ։ Ո՛վ Տէր՝ մեզի խաղաղու֊
թիւն պիտի տաս ․ վասն զի մեր
ամէն գործքերն ալ դուն մեզի հա֊
13 մար գործեցիր ։ Ո՛վ Տէր Աստուած
մեր՝ Քեզմէ ուրիշ տէրեր մեր վրայ
տիրեցին ․ բայց քու անունդ՝ մի֊
14 նակ քուկդ կը յիշենք ։ Անոնք
մեռած են , պիտի չողջըննան ․ ու
ուրուականներ են , չեն կրնար ել֊
լել ․ վասն զի դուն այցելութիւն
ընելով՝ զանոնք բնաջինջ ըրիր , ու
անոնց բոլոր յիշատակը կորսըն֊
15 ցուցիր ։ Դուն այս ազգը աւելցու֊
ցիր՝ ո՛վ Տէր ․ այս ազգը աւելցընե֊
լով՝ փառաւորեցար ․ երկրին ամէն
16 ծայրերը ընդարձակեցիր ։ Ո՛վ Տէր՝
լՆեղութեան մէջ քեզ փնտռեցին ․
քու պատիժդ անոնց վրայ եղած
17 ատենը †աղաչանք ըրին” ։ Ինչպէս
որ խծնանելու մօտ եղող յղի կնիկը
իր երկանցը մէջ տանջուելով կ'ա֊
ղաղակէ , մենք ալ քու առջևդ այն֊
18 պէս եղանք՝ ով Տէր ․ Յղացանք ,
ցաւեր քաշեցինք , հով ծնանողի
պէս եղանք , ու երկիրը չկրցանք
ազատել , և կաշխարհիս բնակիչ֊
19 ները չինկան ։ ձՔու մեռելներդ
պիտի ողջըննան , իմ մեռելներուս
մարմինները յարութիւն պիտի առ֊
նեն ․ յարթընցէ՛ք ու ցնծութեամբ
երգեցէ՛ք՝ ով հողի մէջ բնակող֊
ներ ․ քանզի քու ցօղդ խոտերու
ցօղ է ․ ու երկիրը կը մեռելները
դուրս պիտի նետէ ։
20 Գնա ով իմ ժողովուրդս , ղքու
սենեակներուդ մէ՛ջը մտիր , ու քու
վրադ դռներդ գոցէ ․ պահուէ
ճքիչ մը՝ մէկ վայրկեան մը , մինչև
21 որ բարկութիւնը անցնի ։ Քանզի
ահա Տէրը միր տեղէն կ'ելլէ , որ
երկրի բնակիչներուն այցելութիւն
ընէ իրենց անօրէնութեանը հա֊
մար ․ ու երկիրը իր արիւնները պի֊
տի յայտնէ , և սպաննուածները՝
ալ պիտի չծածկէ ։

## ԳԼ․ ԻԷ

1 Աստուծոյ ունեցած խնամքը իր այգիին վրայ ։
7 Անոր խրատները կը տարբերին դատաստան֊
ներէն ։ 12 Հրէաներէն ու հեթանոսներէն
բաղկացեալ եկեղեցին ։

1 Այն օրը Տէրը՝ իր ամրակուռ , մեծ
ու զօրաւոր սրովը պիտի պատժէ
փախչող Լևիաթան օձը , նայսինքն
ան ծամածուռ Լևիաթան օձը , ու
բծովուն մէջը եղող վիշապը պիտի
2 մեռցընէ ։ Այն օրը ‡գինիի ‡այգիին
3 վրայ դերգեցէ՛ք ․ եԵս Տէրս կը
պահեմ զանիկայ ․ ամէն վայրկեանի
մէջ պիտի ոռոգեմ զանիկայ ․ գի֊
շեր ու ցորեկ անոր պահպանութիւն
պիտի ընեմ , որ չըլլայ թէ անոր
4 վրայ մորթ մը յարձակի ։ Ես բար֊
կութիւն չունիմ ․ երանի թէ ղցա֊
խերը ու փուշերը ինծի դէմ պա֊
տերազմէին ․ ես անոնց վրայ պիտի
քալէի , ու զանոնք մէկէն պիտի
5 այրէի ։ Եթէ ոչ՝ թող իիմ զօրու֊
թեանս ապաւինին ․ թող ըինծի
հետ խաղաղութիւն ընեն ․ ինծի
հետ խաղաղութիւն ընեն ։
6 Ապագայ ժամանակին մէջ Յա֊
կոբը ըպիտի արմատանայ ․ Իսրա֊
յէլը պիտի ծաղկի , ու պիտի ըն֊
ձիւղի , և պտղով աշխարհիս երեսը
7 պիտի լեցընեն ։ Միթէ զանիկայ
զարնողին հարուածի՞ն պէս զար֊
կաւ զանիկայ ․ կամ անկէ սպան֊
նուածներուն սպանմա՞նը պէս ըս֊
8 պաննուեցաւ ։ ժ Չափաւորու֊
թեամբ վիճեցար անոր հետ , երբոր
զանիկայ խրկեցիր , բեւ կարևելեան
հովին օրը՝ սաստիկ հովով տարիր ։
9 Ուստի Յակոբին անօրէնութեանը
առով քաւութիւն պիտի ըլլայ ․
և բոլոր ‖դիտաւորութիւնը աս է՝

Ն․ Ք․ Զ․ Ե՛՛ 712
կ Սաղ․ ԺԷ․ 14։
հ Եզեկ․ ԼԷ․ 1, ...։
յ Դան․ ԺԲ․ 2։
ղ Ել․ ԺԲ․ 22, 23։
ճ Սաղ․ Լ․ 5։ Գլ․ Ծդ․ 7, 8։ Բ Կոր․ Դ․ 17։
մ Միք․ Ա․ 3։ Յուդ․ 14։

ն Սաղ․ Հդ․ 13, 14։
բ Գլ․ Ծա․ 9։ Եզեկ․ ԻԹ․ 3։ ԼԲ․ 2։
‡ Կամ՝ ցանկալի
‡ Սաղ․ Ձ․ 8։ Երեմ․ Բ․ 21։
դ Գլ․ Ե․ 1։
ե Սաղ․ ՃԻա․ 4, 5։
զ Բ Թագ․ Իդ․ 6։ Գլ․ Թ․ 18։
ի Գլ․ Իե․ 4։
ը Յոբ․ Իբ․ 21։
ր Գլ․ ԼԷ․ 31։ Ովս․ Ժդ․ 5, 6։
ժ Յոբ․ Իգ․ 6։ Սաղ․ Զ․ 1։ Երեմ․ Ժ․ 24։ Լ․ 11։ Իգ․ 28։ Ա Կոր․ Ժ․ 13։
ի Սաղ․ Հը․ 38։
‖ Եբր․ պտուղը

Ն. Ք. ԶՔ. ԹՒՐ 712

որ անոր մեղքը վերցընէ. երբոր զո-
հարաններուն բոլոր քարերը՝ կրոյ
փշրուած քարերու պէս ընէ, Աս-
տարովթի կուռքերը, ու արեգա-
կան արձանները՝ ալ պիտի չկանգ-
10 նին ։ Քանզի պարսպաւոր քաղա-
քը՝ ամայի, ու չէն տեղը՝ անապա-
տի պէս թողուած ու մերժուած
պիտի ըլլայ. լ Հոն զուարակ պիտի
արածի, և հոն պիտի պառկի, ու
անոր ճիւղերը պիտի հատցընէ ։
11 Անոր ոստերը չորնալով պիտի կոտ-
րին. կնիկները պիտի գան, ու զա-
նոնք պիտի բռընկցընեն. քանզի
խ անիկայ իմաստուն ժողովուրդ չէ.
ուստի զանիկայ ստեղծողը՝ անոր
վրայ պիտի չգթայ, ու ծ զանիկայ
12 կազմողը՝ անոր պիտի չողորմի ։ Ու
պիտի ըլլայ ան օրը՝ որ Տէրը՝ Գե-
տին յորձանքէն մինչև Եգիպտոսի
հեղեղատը պիտի թօթվէ. և դուք
ով Իսրայելի որդիք՝ մէկիկ մէկիկ
13 պիտի ժողվուիք ։ կ Ու ան օրը հ մեծ
փողը պիտի հնչուի, և Ասորեստանի
երկրին մէջ թափառական եղողնե-
րը, ու Եգիպտոսի երկրին մէջ աք-
սորուածները պիտի գան, ու Երու-
սաղէմ սուրբ լեռանը վրայ՝ Տէրոջը
երկրպագութիւն պիտի ընեն ։

լ Տես Գլ. ժէ. 2, լբ. 14 ։
խ բ Օր. լբ. 28 ։ Գլ. ա. 3 ։ Երեմ. ը. 7 ։
ծ բ Օր. լբ. 18 ։ Գլ. խդ. 1, 7 ։ խդ. 2, 21, 24 ։
կ Գլ. բ. 11 ։
հ Մատ. իդ. 31 ։ Յայտ. ժա. 15 ։

## ԳԼ. ԻԸ

1 Մարգարէն սպառնալիքներ կ'ընէ Եփրեմի մարդոցը՝ իրենց ամբարտաւանութեանը ու գինեմոլութեանը համար. 5 կը ցուցընէ թէ մնացորդը պիտի զօրգանայ, երբոր Քրիստոսի թագաւորութիւնը գայ. 7 կը յանդիմանէ անոնց մոլորութիւնները, 9 անոնց ըմբռնումը, 14 և անոնց անհոգութիւնը ։ 16 Քրիստոս կը խոստացուի իբրև հաստատուն հիմ ։ 18 Անոնց անհոգութիւնը պիտի փորձուի ։ 23 Մարգարէն կը յորդորէ զանոնք, որ Աստուծոյ նախախնամութեանը վրայով մտածեն ։

Ն. Ք. ԹՒՐ 725

1 Վայ ա Եփրեմի գինովներուն հը-
պարտութեան պսակին՝ որուն
բ փառաց զարդը թառամեալ ծա-
ղիկ մըն է, որ գինիով թմրածնե-
րուն պարարտ հովիտին գլուխը կը
2 կենայ ։ Ահա Տէրոջը կողմանէ մէկ
քաջ ու զօրաւոր մէկը մը՝ գ կար-
կուտի փոթորիկի պէս, աւերիչ
մրրիկի պէս, ու սաստիկ ջուրե-
րուն յորդահոս հեղեղին պէս՝ ձեռ-
քովը գետինը պիտի զարնէ զանոնք ։
3 դ Եփրեմի գինովներուն հպարտու-
թեան պսակը ոտքերով պիտի կո-
4 խուի ։ Ու պարարտ հովիտին գը-
լուխը եղող անոր ե փառաց զարդը՝
որ թառամեալ ծաղիկ մըն է,
հունձքէն առաջ վաղահասուկ
թուզի պէս պիտի ըլլայ, որ զանի-
կայ տեսնողը՝ ձեռքը առածին պէս
5 կը կլլէ ։ Ան օրը զօրաց Տէրը՝ իր
ժողովրդեանը մնացորդին փառաց
պսակ ու շքեղ թագ պիտի ըլլայ

ա Հմր 3 ։
բ Հմր 4 ։
գ Գլ. լ. 30 ։ Եզեկ. ժգ. 11 ։
դ Հմր 1 ։
ե Հմր 1 ։

6 Ու դատաստանի նստողին՝ դատաս-
տանի ոգի, ու պատերազմը դէպ 'ի
դուռը դարձընողին՝ զօրութիւն
7 պիտի ըլլայ ։ Բայց ասոնք ալ գի-
նիով կը մոլորին, ու ցքիով կը
դանդաչեն. է քահանան ու մար-
գարէն ցքիով կը մոլորին. անոնք
գինիէն կ'ընկղմին, ցքիէն կը դան-
դաչեն, տեսիլքի մէջ կը մոլորին,
ու դատաստանի մէջ կը սխալին ։
8 Վասն զի անոնց ամէն սեղանները
փսխունքի պղծութիւնով լեցուած
են, այնպէս որ մաքուր տեղ մը չը-
կայ ։
9 ը Որո՞ւն գիտութիւն սորվեցընէ,
որո՞ւն կրթութիւն հասկըցընէ.
կաթէն կտրուածներո՞ւն, ստինքէն
10 զատուածներո՞ւն ։ Քանզի խրատ
խրատի վրայ, խրատ խրատի վրայ.
հրաման հրամանի վրայ, հրաման
հրամանի վրայ, քիչ մը հոս, քիչ
11 մը հոն ։ Ցիրաւի աս ժողովուրդին
հետ՝ թ *չհասկցուելու շրթունք-
քով և օտար լեզուով պիտի խօսի,
12 Քանզի անոնց ըսաւ. Ցոգնածը
հանգստացընելու հանգիստնիդ ա-
սիկայ է, ու մխիթարութիւնը ա-
սիկայ է. բայց անոնք մտիկ ընել
13 չուզեցին ։ Ուստի Տէրոջը խօսքը
պիտի ըլլայ անոնց՝ խրատ խրատի
վրայ, խրատ խրատի վրայ, հրա-
ման հրամանի վրայ, հրաման հրա-
մանի վրայ, քիչ մը հոս. քիչ մը
հոն. որպէս զի երթան՝ կռնակի
վրայ իյնան ու կոտրտին, և որո-
գայթի մէջ իյնալով բռնուին ։
14 Ուրեմն Տէրոջը խօսքը մտիկ ը-
րէք՝ ով ծաղր ընող մարդիկ, որ
Երուսաղէմի մէջ բնակող աս ժո-
15 ղովուրդին վրայ կը տիրէք ։ Որով-
հետև ըսիք. Մենք մահուան հետ
ուխտ ըրինք, ու գերեզմանին հետ
դաշնակից եղանք, որ եթէ յորդա-
հոս †հեղեղը անցնի, մեր վրայ
պիտի չգայ. ժ վասն զի ստութիւնը
մեզի պատսպարան ըրինք, և ու-
նայնութեան մէջ պահուեցանք.
16 Անոր համար Տէր Եհովան այսպէս
կ'ըսէ. Ահա ես Սիոնի մէջ ի վէմ
մը կը դնեմ իբրև հիմ, ընտիր
վէմ, պատուական անկիւն, հաս-
տատուն հիմ. ով որ հաւատայ
անոր, պիտի չարտորայ փախչելու ։
17 Ու դատաստանը լարին՝ ու արդա-
րութիւնը կշիռին համեմատ պիտի
դնեմ. և ստութեան պատսպա-
րանը՝ կարկուտը պիտի տանի ու
պահուելու տեղը՝ ջուրերը պիտի
18 կոխեն ։ Ու մահուան հետ ըրած
ուխտերնիդ պիտի աւրուի, ու գե-
րեզմանի հետ ըրած դաշնակցու-
թիւննիդ պիտի չհաստատուի.
երբոր յորդահոս հեղեղը անց-

Ն. Ք. ԶՔ. ԹՒՐ 725

զ Առակ. ի. 1 ։ Ովս. դ. 11 ։
է Գլ. ծզ. 10, 12 ։
ը Երեմ. զ. 10 ։
թ Ա Կոր. ժդ. 21 ։
* Եբր. Թոթովխօս
† Եբր. խարազանը
ժ Ամով. բ. 4 ։
ի Ծն. խթ. 24 ։ Սաղ. ճժը. 22 ։ Մատ. իա. 42 ։ Գործ. դ. 11 ։ Հռով. թ. 33 ։ Եփես. բ. 20 ։ Ա Պետ. բ. 6, 7, 8 ։
լ Հմր 15 ։

Ն. Ք. ԳՓ.
Իրր 725

նի, դուք անկէ պիտի կոխուիք ։
19 Անցնելու ատենը ձեզ պիտի առնէ.
քանզի ամէն առտու, ցորեկ ու
գիշեր պիտի անցնի. ու անոր լուրը
առնելը անգամ սոսկալի պիտի ըլ-
20 լայ ։ Քանզի անկողինը՝ երկըննա-
լու համար կարճ է, ու ծածկոցը
21 ծածկուելու համար նեղ է ։ Քան-
զի Տէրը պիտի ելլէ՝ ինչպէս որ
ե Փարասին լեռանը վրայ ելաւ, ու
պիտի բարկանայ՝ ինչպէս որ ծ Գա-
բաւոնի ձորին մէջ բարկացաւ, որ
իր գործը՝ իր օտար գործը գործէ,
ու իր պաշտօնը՝ իր օտար պաշտօնը
22 կատարէ ։ Եւ հիմա ծաղր ընողներ
մի՛ ըլլաք, որ չըլլայ թէ ձեր կա-
պանքները աւելի ուժովնան. քան-
զի զօրաց Տէր Եհովայէն կողմանէ
բոլոր երկրին վրայ հնախասահմա-
նեալ աւերում մը լսեցի ։
23 Ականջ տուէք՝ ու իմ ձայնս լսե-
ցէք. մտիկ ըրէք՝ ու իմ խօսքս
24 լսեցէ՛ք. Միթէ հերկողը ցանելու
համար միշտ կը հերկէ՞. միշտ իր
երկիրը կը բանայ, ու անոր կոշ-
25 տերը կը տափանէ՞. Անոր երեսը
շիտկելէն ետքը՝ միթէ արջնդեղը ու
չամանը չը՞ցաներ, և ցորենը կար-
գով, ու գարին որոշուած տեղը,
և հաճարը իր սահմանին մէջը չը՞դը-
26 ներ. Վասն զի իր Աստուածը կըր-
թութիւն կու տայ անոր, ու կը
սորվեցընէ թէ ինչ պէտք է ընել ։
27 Քանզի արջնդեղը կամնասայլով
չծեծուիր, ու չամանին վրայ սայլին
անիւը չդառնար. հապա արջնդեղը
գաւազանով, ու չամանը ցուպով
28 կը թօթվուի ։ Հացին ցորենը կը
կոխուի. բայց զանիկայ միշտ չծե-
ծեր, ու սայլին անիւը զանիկայ
չկոտրտեր, և ձիերը զանիկայ չեն
29 փշրեր ։ Ասիկայ ալ զօրաց Տէ-
րոջմէն կ'ելլէ, յ որուն խորհուրդը
սքանչելի է, ու անոր իմաստու-
թիւնը գերազանց է ։

ե Բ Թագ. ե. 20 ։ Ա Մն. ժդ. 11 ։
ծ Յես. ժ. 10, 12 ։ Բ Թագ. ե. 25 ։ Ա Մն. ժդ. 16 ։
է Ողբ. գ. 33 ։
հ Գլ. ժ. 22, 23 ։ Դան. թ. 27 ։
յ Սաղ. ղբ. 5 ։ Երեմ. լբ. 19 ։

## ԳԼ. ԻԹ

1 Աստուծոյ ծանր դատաստանները Երուսաղէ-
մի վրայ. 7 անոր թշնամիներուն անյաջողու-
թիւնը ։ 9 Հրէից պակասամտութիւնը, 13 և
խորին կեղծաւորութիւնը ։ 18 Բարեպաշտ
մարդոց սրբութեան խոստմունք մը ։

1 Վա՜յ — *Արիէլին՝ ե Դաւիթին բը-
նակած Արիէլ քաղաքին. տարի
տարիի վրայ աւելցուցէք. թող
2 տարեկան տօները դառնան ։ Բայց
ես Արիէլը նեղը պիտի ձգեմ, ու
անիկայ տրտում ու տխուր պիտի
ըլլայ. և ինծի †Արիէլի պէս պիտի
3 ըլլայ ։ Ու քեզի դէմ շուրջանակի
բանակ պիտի դնեմ, և քեզ պատ-
նէշներով պիտի պաշարեմ, ու քե-
զի դէմ հողաբլուրներ պիտի կանգ-
4 նեմ ։ Եւ պիտի խոնարհիս ու գետ-
նէն խօսիս, և քու խօսքերդ հողին
տակէն պիտի ելլեն, ու քու ձայնդ
գ վհուկի ձայնին պէս գետնէն պիտի
ըլլայ, և քու խօսքդ՝ հողէն պիտի
փսփսայ ։
5 Ու քու դ օտարականներուդ
բազմութիւնը՝ մանր փոշիի պէս, և
քու բռնաւորներուդ բազմութիւ-
նը՝ ե անցնող մղեղի պէս պիտի
ըլլայ. ու ասիկայ զ յանկարծ
մէկ վայրկեանի մէջ պիտի ըլ-
6 լայ ։ է Զօրաց Տէրոջը կողմանէ՝
որոտումով, գետնաշարժով,
մեծ ձայնով, մրրիկով, փո-
թորիկով ու մաշող կրակի բոցով՝
7 այցելութիւն պիտի ըլլայ ։ ը Ու
Արիէլի վրայ պատերազմի եկող բո-
լոր ազգերուն բազմութիւնը, և
աս քաղաքին վրայ, ու անոր պա-
րիսպներուն վրայ բոլոր յարձակող-
ները, ու զանիկայ պաշարողները՝
թ գիշերը տեսնուած երազի պէս պի-
8 տի ըլլան ։ ժ Եւ ինչպէս որ անօթի
եղողը՝ երազին մէջ կը տեսնէ թէ
կերակուր կ'ուտէ, ու արթըննալէն
ետքը փորը անօթի կը մնայ, և
ինչպէս որ ծարաւ մարդը՝ երազին
մէջ կը տեսնէ թէ ջուր կը խմէ,
ու արթըննալէն ետքը կը մարի, ու
հոգին կը պապակի, այնպէս պիտի
ըլլայ բոլոր ազգերուն բազմութիւ-
նը՝ որ Սիոն լեռանը դէմ պատե-
9 րազմի կու գան ։ Ապշեցէ՛ք ու
զարմացէ՛ք. շլացէ՛ք ու թմրեցէ՛ք.
ի անոնք արբած են, լ բայց գինիէն
չէ՛. անոնք կը դանդաչեն, բայց
10 ցքիէն չէ՛ ։ Քանզի խ Տէրը ձեր վը-
րայ թմրութեան ոգի թափեց, ու
ծ ձեր աչքերը գոցեց. մարգարէնե-
րը ու ձեր գլխաւորները՝ որոնք տե-
11 սիլք կը տեսնէին, կուրցուց ։ Եւ
ամենուն տեսիլքները կ կնքուած
գիրքի մը խօսքերուն պէս պիտի ըլ-
լան ձեզի, որ կարդալ գիտցողին
կու տան, ու կ'ըսեն. Կ'աղաչենք,
ասիկայ կարդա՛. հ ու անիկայ կ'ը-
սէ. Չեմ կրնար, վասն զի կնքուած
12 է ։ Եւ այն գիրքը կարդալ չգիտ-
ցողին կու տան, ու կ'ըսեն. Կ'ա-
ղաչենք, ասիկայ կարդա՛. ու անի-
կայ կ'ըսէ. Կարդալ չեմ գիտեր ։
13 Անոր համար Տէրը կ'ըսէ. յ Որով-
հետև աս ժողովուրդը ինծի բերնովը
կը մօտենայ, և զիս շրթունքներո-
վը կը պատուէ, բայց անոնց սիրտը
ինծմէ հեռու է, ու ինծմէ ունեցած
վախերնին՝ ն մարդոց սորվեցուցած
14 պատուիրանք մըն է. շ Անոր համար
ահա՛ ես աս ժողովուրդին մէջը այ-
սուհետև զարմանալի գործքեր ու
հրաշքներ պիտի ընեմ. ո և անոնց
իմաստուններուն իմաստութիւնը

Իրր 712
* Տ՛ս Եզեկ. խգ. 15, 16 ։
* Ա՛ Աստուծոյ կրակարանին, կամ զոհանոցին
ե Բ Թագ. ե. 9 ։
† Կամ՝ զոհանոցի

Ն. Ք. ԳՓ.
Իրր 712
գ Գլ. ը. 19 ։
դ Գլ. իե. 5 ։
ե Յոբ. իա. 18 ։ Գլ. ժէ. 13 ։
զ Գլ. լ. 13 ։
է Գլ. իը. 2 ։ լ. 30 ։
ը Գլ. լէ. 36 ։
թ Յոբ. ի. 8 ։
ժ Սաղ. հզ. 20 ։
ի Տե՛ս Գլ. իը. 7, 8 ։
լ Գլ. ծա. 21 ։
խ Հռով. ժա. 8 ։
ծ Սաղ. կթ. 23 ։ Գլ. զ. 10 ։
կ Գլ. ը. 16 ։
հ Դան. ժբ. 4, 9 ։ Յայտ. ե. 1-5, 9 ։ զ. 1 ։
յ Եզեկ. լգ. 31 ։ Մատ. ժե. 8, 9 ։ Մար. է. 6, 7 ։
ն Կող. բ. 22 ։
շ Ամբ. ա. 5 ։
ո Երեմ. խթ. 7 ։ Աբդ. 8 ։ Ա Կոր. ա. 19 ։

Ն․ Ք․ Վ․ Քրի․ Երր 712
յԳլ․ Լ․ 1։
ՆՍաղ․ ՂԴ․ 7։
ՆԳլ․ ԽԵ․ 9։ Հռով․ Թ․ 20։
ՌԳլ․ ԼԲ․ 15։
ՆԳլ․ ԼԵ․ 5։
ԴԳլ․ ԿԱ․ 1։
ՉՅակ․ Բ․ 5։
ՌԳլ․ ԻԸ․ 14, 22։
ՌՄիք․ Բ․ 1։
ՎԱմով․ Ե․ 10, 12։
*Եբր․ յանդիմանութիւն
ՓՅես․ ԻԴ․ 3։
†Կամ՝ տեսնէն
ՐԳլ․ ԺԹ․ 25։ ԽԵ․ 11։ Կ․ 21։ Եփե․ Բ․ 10։
‡Եբր․ սրբեն․
ՑԳլ․ ԻԸ․ 7։

պիտի կորսուի, ու հանճարեղնե-
րուն հանճարը բնաջինջ պիտի ըլ-
15 լայ ։ յՎա՜յ անոնց՝ որ խորունկ
տեղ կը փնտռեն, իրենց խորհուրդը
Տէրոջմէ պահելու համար․ ու իրենց
գործքը մութի մէջ կ'ընեն, Նու
կ'ըսեն․ Մեզ ո՞վ կը տեսնէ, ու
16 մեզ ո՞վ գիտէ ։ Վա՜յ ձեր կամա-
կորութեանը․ միթէ բրուտը կա-
ւին տեղը կը դրուի՞․ քանզի կա-
րելի՞ է որ Նգործը՝ զինքը գործողին
համար ըսէ թէ, Անիկայ զիս չգոր-
ծեց․ ու ստեղծուածը՝ զինքը ըս-
տեղծողին համար թէ՝ Անիկայ չը-
17 հասկընար ։ Ահա՛ շատ քիչ ժա-
մանակէն ետքը՝ ՌԼիբանանը պտղա-
բեր արտի պիտի դառնայ, ու պըտ-
ղաբեր արտը՝ անտառ պիտի սե-
18 պուի ։ Ու Նան օրը՝ խուլերը գիր-
քին խօսքերը պիտի լսեն․ և կու-
րաց աչքերը մէգէն ու խաւարէն
19 Դազատելով՝ պիտի տեսնեն ։ Եւ
Դխեղճերը Տէրոջմով իրենց ուրա-
խութիւնը պիտի աւելցընեն, ու
Չչքաւոր մարդիկները Իսրայէլին
20 Սուրբովը պիտի ցնծան ։ Վասն
զի բռնաւորը պիտի վերնայ, և
Ռծաղր ընողը պիտի չմնայ․ ու ա-
մէն անոնք՝ որ Ռանօրէնութեան
համար կը հսկեն, պիտի կորսուին․
21 Անոնք որ մարդը դատաստանի մէջ
յանցաւոր կը հանեն, ու Վդրան
Վդրանը մէջ *ջատագովութիւն ը-
նողին համար որոգայթ կը լարեն․
և արդարին իրաւունքը կը խափա-
22 նեն ։ Անոր համար ՓԱբրահամը
փրկող Տէրը՝ Յակոբին տանը հա-
մար այսպէս կ'ըսէ․ Յակոբը մէ-
մըն ալ պիտի չամչնայ, ու անոր
երեսը մէյմըն ալ պիտի չդեղնի․
23 Վասն զի երբոր †տեսնէ իր տղաքը
Րիմ ձեռացս գործը իր մէջը, անոնք
անունը իմ անունս պիտի ‡փառաւ-
որեն․ Յակոբին Սուրբը պիտի
‡փառաւորեն, ու Իսրայէլի Աս-
24 տուծմէն պիտի վախնան ։ Եւ Ցհո-
գիով մոլորածները խոհեմութիւնը
պիտի ճանչնան․ ու տրտնջողները
իմաստութիւն պիտի սորվին ։

## ԳԼ․ Լ

1 Մարգարէն սպառնալիքներ կ'ընէ ժողովուրդին՝ իրենց յոյսը Եգիպտոսի վրայ դնելնուն համար, 8 ու Աստուծոյ խօսքը անարգելնուն համար․ 18 կը նախաձայնէ Աստուծոյ ողորմութիւնները որ իր եկեղեցիին պիտի ընէ․ 27 նաև անոր բարկութիւնը, ու ժողովուրդին ուրախութիւնը՝ Ասորեստանին կործանման ատենը ։

Երր 713
ԱԲՕր․ ԻԹ․ 19։
ՔԳլ․ ԻԹ․ 15։

1 Վա՜յ ապստամբ տղաքներուն՝ կ'ըսէ
Տէրը, որ Ամեղք մեղքի վրայ
աւելցընելու համար Քխորհուրդ կ'ը-
նեն, բայց ինծմով չէ․ ու դաշ-
նագրութիւն կ'ընեն, բայց իմ Հո-
2 գիովս չէ․ Որ Գառանց իմ բերնիս
հարցընելու՝ Դկ'երթան Եգիպտոս
կ'իջնեն, Փարաւոնի պաշտպանու-
թեանը տակը ամրանալու, ու Ե-
գիպտոսի հովանիին ապաւինելու
3 համար ։ ԵԲայց Փարաւոնին
պաշտպանութիւնը ձեզի ամօթ,
ու Եգիպտոսի հովանիին ապաւի-
նիլը ձեզի նախատինք պիտի ըլլայ ։
4 Քանզի անոր իշխանները ՆՑայանիս
գացին, ու դեսպանները Հանէս
5 հասան ։ ԵԱմէնքը ամչցան անօ-
գուտ ժողովուրդին պատճառովը՝ որ իրենց
օգուտ մը ընելու կարողութիւն
չունի․ անիկայ չկրնար օգնութիւն
մը կամ օգուտ մը ընել․ հապա
իրենց ամօթ ու նախատինք պիտի
6 ըլլայ ։ Ահա ‖բեռ կրող անասուննե-
րը՝ դէպ 'ի հարաւ՝ նեղութեան ու
վշտաց, մատակ առիւծի․ և առոյգ
առիւծի, իժի, ու կիզող թևա-
ւոր օձին երկիրը ԸԵրթան․ իրենց
ստացուածքը էշերու կռնակին վը-
րայ, ու իրենց գանձերը ուղտի
սապատին վրայ կը տանին անանկ
ժողովուրդի մը՝ որ իրենց օգուտ
7 չունի ։ ԹՎասն զի Եգիպտա-
ցիք պարապ ու զուր տեղը օգ-
նութիւն կ'ընեն․ անոր համար
անոր Պարծող նստող պարծենկոտ
8 կանչեցի ։ Ուրեմն գնա, անոնց
առջևը Ժտախտակի վը-
րայ գրէ, և գիրքի մէջ դրոշմէ,
որ գալու ժամանակին մնայ՝ յա-
ւիտենական վկայութեան համար ։
9 Քանզի Իանիկայ ապստամբ ժողո-
վուրդ մըն է․ ստախօս տղաքներ
են, ու անանկ տղաքներ են՝ որ Տէրո-
10 ջը օրէնքը լսել չեն ուզեր․ ԼՈրոնք
տեսանողներուն կ'ըսեն․ Մի տես-
նէք, ու մարգարէներուն՝ Մեզի
համար ուղիղ բաներ մի մարգա-
րէանաք․ Խմեզի շողոքորթութիւն-
ներ խօսեցէք, խաբէութիւններ
11 մարգարէացէք․ Ճամբայէն ետ
քաշուեցէք, շաւիղէն խոտորեցէք,
Իսրայէլին Սուրբը մեր առջևէն
12 վերցուցէք ։ Ուստի Իսրայէլին
Սուրբը այսպէս կ'ըսէ․ որովհետև
դուք աս խօսքը անարգեցիք, և
բռնութեան ու ծռութեան ա-
պաւինեցաք, ու անոնց վրայ կըռ-
13 թընեցաք․ Անոր համար աս անօ-
րէնութիւնը՝ բարձր պարիսպի մը
Ծիյնալու վրայ եղող ուռեցած
ճեղքուածքին պէս պիտի ըլլայ ձե-
զի, որուն կործանումը Կյանկար-
ծակի մէկ վայրկեանի մէջ կու գայ ։
14 Եւ Հզանիկայ բրուտներու սափորին
կոտրուածքին պէս պիտի կոտրէ․
պիտի փշրէ ու պիտի չխնայէ․ և
անոր կտորուանքներուն մէջը՝ կրա-
կարանէն կրակ առնելու կամ փո-

Ն․ Ք․ Վ․ Քրի․ Երր 713
Գ Թագ․ ԻԷ․ 21։ Յես․ Թ 14։ Դ Թագ․ ԻԲ․ 7։ Երեմ․ ԻԱ 2։ ԽԲ․ 2, 20։
ԴԳլ․ ԼԱ․ 1։
ԵԳլ․ Ի․ 5։ Երեմ․ ԼԷ․ 5․ 7։
ՆԳլ․ ԺԹ․ 11։
ԵԵրեմ․ Բ․ 36։
‖Եբր․ անասուններու բեռը
ԸԲՕր․ Ը․ 15։
ԹԵրեմ․ ԼԷ․ 7։
ԺԱմբ․ Բ․ 2։
ԻԲՕր․ ԼԲ․ 20։ Գլ․ Ա․ 4։ Հմր 1։
ԼԵրեմ․ ԺԱ․ 21։ Ամով Բ․ 12։ Է․ 13։ Միք․ Բ․ 6։
Խ Գ Թագ․ ԻԲ․ 13։ Միք․ Բ․ 11։
ԾՍաղ․ ԿԲ․ 3։
ԿԳլ․ ԻԹ․ 5։
ՀՍաղ․ Բ․ 9։ Երեմ․ ԺԹ․ 11։

Ն · Ք · ԴՔ · Իրր 713

սէն ջուր հանելու կտոր մը պիտի
15 չգտնուի ։ Վասն զի Եհովայ Տէրը՝
Իսրայէլին Սուրբը այսպէս կ՚ըսէ ·
Դուք դառնալով ու հանգստա-
նալով փրկութիւն կը գտնէք · ձեր
զօրութիւնը՝ հանդարտութեամբ ու
ապաւինութեամբ կ՚ըլլայ · Բայց
16 դուք չուզեցիք , Հապա ըսիք ·
Ոչ , ձի հեծնենք փախչինք · անոր
համար պիտի փախչիք · Արագըն-
թաց ձիերու վրայ հեծնենք՝ ըսիք ·
անոր համար ձեզ հալածողներն ալ
17 արագընթաց պիտի ըլլան ։ Մէ-
կուն սպառնալիքովը հազարնիդ՝
հինգին սպառնալիքովը ամէնքդ պի-
տի փախչիք · մինչև որ լեռան գը-
լուխը սեան պէս , ու բլուրի վրայ
18 դրօշակի պէս թողուիք ։ Բայց
Տէրը կը սպասէ որ ձեզի գթու-
թիւն ընէ , ու պիտի բարձրանայ
որ ձեզի ողորմի · քանզի Տէրը ար-
դար Աստուած մըն է · Երանի ան
ամենուն՝ որ անոր կը սպասեն ։
19 Քանզի ժողովուրդը Սիօնի վը-
րայ , Երուսաղէմի մէջ պիտի բնա-
կի · ալ բնաւ պիտի չլաս · քու ա-
ղաղակիդ ձայնը ելածին պէս՝ շու-
տով քեզի պիտի ողորմի · զանիկայ
լսածին պէս՝ քեզի պատասխան պի-
20 տի տայ ։ Թէև Տէրը ձեզի Նեղու-
թեան հաց և տառապանաց ջուր
տայ , քու ուսուցիչներդ մէյմըն
ալ պիտի չհեռանան · հապա քու
աչքերդ քու ուսուցիչներդ պիտի
21 տեսնեն ։ Ու երբոր աջ կողմը
կամ ձախ կողմը խոտորելու ըլլաս ·
քու ականջներդ ետևէդ մէկ խօսք
մը պիտի լսեն , որ կ՚ըսէ · Ասիկայ
է ճամբան , ասոր մէջ քալեցէք ։
22 Ան ատենը քու քանդակած ար-
ծաթ կուռքերուդ ծածկոցները՝ ու
ոսկի կուռքերուդ զարդերը պիտի
պղծես · զանոնք դաշտանի լաթի
պէս պիտի նետես · Անոնց ամէն
մէկուն պիտի ըսես · Դո՛ւրս ելիր ։
23 Եւ Տէրը քու սերմանած երկրիդ
հունտերուն վրայ անձրև , ու
երկրի արդիւնքէն հաց պիտի տայ ,
և առատ ու պարարտ պիտի ըլ-
լայ · ան օրը քու խաշինքդ ընդար-
ձակ արօտի մէջ պիտի ճարակին ։
24 Ու երկիրը գործող եզները ու է-
շերը՝ թիով ու հեծանոցով հոսած
մաքուր *կերակուր պիտի ուտեն ։
25 Եւ մեծ կոտորածին օրը , աշ-
տարակներուն կործանման ատենը ,
ամէն բարձր լեռան վրայ՝ և ամէն
բարձրացած բլուրի վրայ՝ գետեր
ու ջուրի առուներ պիտի ըլլան ։
26 Եւ ան օրը՝ որ Տէրը իր ժողովուր-
դին վէրքը պիտի պատէ , ու ա-
նոնց հարուածքին խոցը պիտի բը-
ժշկէ , լուսնին լոյսը արևին լոյ-

Յ Գլ · Է · 4 ։
Մատ · ԻԳ · 37 ։
Ղև · ԻԶ · 8 ։ Օր · ԻԲ · 25 ։ ԼԲ · 30 ։ Յես · ԻԳ · 10 ։
Սաղ · Բ · 12 ։ ԼԴ · 8 ։ Առակ · ԺԶ · 20 ։ Երեմ · ԺԷ · 7 ։
Գլ · ԿԵ · 9 ։
Գ Թագ · ԻԲ · 27 ։ Սաղ · ճԻԷ · 2 ։
Սաղ · ՀԴ · 9 ։ Տես Ամով · Ը · 11 ։
Յես · Ա · 7 ։
Բ Մն · ԼԱ · 1 ։ Գլ · Բ · 20 ։ ԼԱ · 7 ։
Ովս · ԺԴ · 8 ։
Մատ · Զ · 33 ։ Ա Տիմ · Դ · 8 ։
* Կամ՝ շաղուածք
Գլ · Բ · 14 ։ 15 ։ ԽԴ · 3 ։
Գլ · Կ · 19 ։ 20 ։

սին պէս , ու արևին լոյսը եօթն-
պատիկ աւելի , ու եօթը օրուան
լոյսին չափ պիտի ըլլայ ։
27 Ահա Տէրոջը անունը հեռուէն
կու գայ · անոր բարկութիւնը կը
վառի , ու բոցը սաստիկ է · շըր-
թունքները սրտմտութեամբ լե-
ցուած է , ու լեզուն մաշող կրակի
28 պէս է · Եւ անոր հոգին յոր-
դահոս գետի պէս մինչև պա-
րանոցը պիտի հասնի , որ ազգերը
ունայնութեան մաղով մաղէ , և
ժողովուրդներուն կզակը սանձ
29 դնելով զանոնք խոտորցընէ ։ Դուք
սուրբ տօնի մը գիշերուան պէս
երգ պիտի ունենաք · ու Իսրայէլի
Վէմին՝ Տէրոջը լեռը երթալու
համար՝ սրինգով գացողին պէս՝
սրտի ուրախութիւն պիտի ունե-
30 նաք ։ Եւ Տէրը իր փառաւոր
ձայնը լսել պիտի տայ , ու իր սաս-
տիկ բարկութեամբը , և մաշող
կրակին բոցովը , հեղեղով , փո-
թորիկով , ու կարկուտի քարե-
րով՝ իր երկընցած բազուկը պիտի
31 ցուցընէ ։ Վասն զի գաւազա-
նով զարնող Ասորեստանցին Տէ-
32 րոջը ձայնէն պիտի ճնշուի ։ Ու
որոշուած գաւազանին ամէն հա-
րուածը՝ որ Տէրը անոր վրայ պի-
տի դնէ , թմբուկներով ու քնար-
ներով պիտի ըլլայ · և անոր հետ
աղմկալից պատերազմներով պիտի
33 պատերազմի ։ Քանզի Տօփեթը
շատոնցմէ պատրաստուած է · անի-
կայ ալ թագաւորին համար պատ-
րաստուեցաւ · զանիկայ խորունկ-
ցուց , ու լայնցուց · անոր դէզը
կրակ ու շատ փայտ է · զանիկայ
Տէրոջը շունչը՝ ծծումբի հեղեղի
պէս պիտի բռընկցընէ ։

## ԳԼ · ԼԱ

1 Մարգարէն կ՚անիծէ ան յիմարութիւնը՝ որով Եգիպտոսին կ՚ապաւինէին , և զԱստուած կը մերժէին · 6 կը յորդորէ ժողովուրդը որ դարձի գան · 8 կը ցուցընէ Ասորեստանի կործանումը ։

1 Վա՜յ անոնց՝ որ օգնութեան հա-
մար Եգիպտոս կ՚իջնեն , ու
ձիերու կը վստահին , և կառքե-
րու կ՚ապաւինին , որովհետև շատ
են , ու ձիաւորներուն , որովհետև
խիստ զօրաւոր են . և Իսրայէլին
Սուրբին չեն նայիր , ու Տէրը չեն
2 փնտռեր ։ Բայց անիկայ ալ իմաս-
տուն է , ու չարիք կը բերէ . և իր
խօսքերը ետ չդարձըներ · ու չարե-
րուն տանը դէմ , և անօրէնու-
թիւն գործողներուն օգնութեանը
3 դէմ կ՚ելլէ ։ Արդ՝ Եգիպտացիք
մարդ են , և ոչ թէ Աստուած ·
ու անոնց ձիերը մարմին են , և

Ն · Ք · ԴՔ · Իրր 713
Գլ · ԺԱ · 4 ։ Բ Թես · Բ · 8 ։
Գլ · Ը · 8 ։
Գլ · ԼԷ · 29 ։
Սաղ · ԽԲ · 4 ։
Գլ · Բ · 8 ։
Գլ · ԻԹ · 6 ։
Գլ · ԻԸ · 2 ։ ԼԲ · 19 ։
Եբր · բազուկին իջնելը
Գլ · Ժ · Ծ · 24 ։
Գլ · ԼԷ · 36 ։
Եբր · անցքը
Գլ · ԺԱ · 15 ։ ԺԹ · 16 ։
Երեմ · Է · 31 ։ ԺԹ · 6 ։
Գլ · Լ · 2 ։ ԼԶ · 6 ։ Եզեկ · ԺԷ · 15 ։
Սաղ · Ի · 7 ։ Գլ · ԼԶ · 9 ։
Կամ՝ բազմութիւն
Դան · Թ · 13 ։ Ովս · Է · 7 ։
Թուոց · ԻԳ · 19 ։
Սաղ · ճԽԶ · 3 , 5 ։

չէ թէ հոգի . ու երբոր Տէրը իր
ձեռքը երկնցընէ , թէ օգնու-
թիւն ընողը պիտի սահի , և թէ
օգնութիւն գտնողը պիտի իյնայ .
ու ամէնը մէկտեղ պիտի կոր-
4 սուին ։ Քանզի Տէրը ինծի այս-
պէս ըսաւ . Ինչոր օրինակ առիւ-
ծը , կամ կորիւնը իր որսին հա-
մար կը գոչէ , ու երբոր հովիւնե-
րուն գունդը անոր վրայ կը ժող-
վուին , անոնց ձայնէն չվախնար ,
ու անոնց աղաղակէն չվհատիր ,
այնպէս ալ զօրաց Տէրը Սիօն
լեռանը համար , ու անոր բլուրին
համար պատերազմելու պիտի իջ-
5 նէ ։ Ինչպէս որ թռչունները
իրենց ձագերը կը ծածկեն , այնպէս
ալ զօրաց Տէրը Երուսաղէմին
պաշտպանութիւն պիտի ընէ .
պիտի պաշտպանէ ու փրկէ զա-
նոնք . պիտի *անցնի , ու պիտի
ազատէ ։
6 Դուք ան Աստուծոյն դարձէք ,
ուսկից որ Իսրայէլի որդիքը ՚ չարա-
7 չար ապստամբեցան ։ Քանզի ան
օրը՝ ամէն մարդ իմէկգի պիտի նե-
տէ իր արծաթէ կուռքերը , ու ոս-
կիէ կուռքերը , որոնք ձեռքերնիդ
8 շինեցին ձեզի մեղքի համար ։ Եւ
Ասորեստանցին սրով պիտի իյ-
նայ , բայց չէ թէ մարդու սրով .
հապա զանիկայ անանկ մէկ սուր մը
պիտի ուտէ , որ մարդու սուր չէ .
ու անիկայ սուրին երեսէն պիտի
փախչի , և անոր երիտասարդները
9 հարկատու պիտի ըլլան ։ Ու ՚ անի-
կայ իր վախէն պատճառաւը՝ իր
† բերդը պիտի անցնի . և անոր իշ-
խանները դրօշակէն պիտի զարհու-
րին , կ՚ըսէ Տէրը , որուն կրակը
Սիօնի մէջ է , ու փուռը Երուսա-
ղէմի մէջ ։

## ԳԼ . ԼԲ

1 Քրիստոսի թագաւորութեանը բարիքները ։ 9 Մարգարէն՝ երկրին ամայութիւնը կը նախաձայնէ . 15 ու կը խոստանայ ժողովուրդին դարձը ու բարերաղդութիւնը ։

1 Ահա ⁼ թագաւոր մը արդարու-
թեամբ պիտի թագաւորէ . ու
իշխանները իրաւունքով պիտի իշ-
2 խեն ։ Եւ ‡ այն մարդը՝՝ հովի դէմ
պահուելու պատսպարանի պէս , ու ‡ փո-
թորիկի դէմ պահուելու ծածկոցի պէս ,
չոր տեղը ջուրի վտակներու
պէս , և ծարաւուտ երկրի մէջ՝ մեծ
ապառաժի մը հովանիին պէս պիտի
3 ըլլայ ։ Ու ‡ տեսնողներուն աչքե-
րը պիտի չշլանան , և լսողներուն
4 ականջները մտիկ պիտի ընեն ։ Ու
արտորացողներուն սիրտը գիտու-
թիւն պիտի հասկընայ , և թոթո-
վախօսներուն լեզուն յստակ խօսե-
5 լու պատրաստ պիտի ըլլայ ։ Անըզ-
գամին մէյմըն ալ ազնուաբարոյ պի-
տի չըսուի , ու ագահին մէյմըն ալ
6 առատաձեռն պիտի չըսուի ․ Վասն
զի անզգամը անզգամութիւն կը
խօսի , ու անոր սիրտը անօրէնու-
թիւն կը գործէ . կեղծաւորութիւն
կ՚ընէ , ու Տէրոջը վրայով ամբարըշ-
տութիւն կը խօսի . անօթիին հո-
գին պարապ կը ձգէ , ու ծարա-
7 ւին խմելիքը կը հատցընէ ։ Եւ ա-
գահին ‖ գործքները չար են . անի-
կայ սուտ խօսքերով աղքատները
կորսընցընելու համար՝ նենգու-
թիւններ կը խորհի , թէև տնանկը
8 արդարութեամբ խօսի ։ Բայց ազ-
նուաբարոյ մարդը՝ ազնիւ բաներ
կը խորհի , ու ազնիւ բաներու վրայ
հաստատ կը մնայ ։
9 Ո՛վ ⸗ հանգիստ կնիկներ՝ ելէ՛ք ,
իմ ձայնս մտիկ ըրէք . ո՛վ ան-
հոգ աղջիկներ՝ իմ խօսքիս ականջ
10 տուէք ։ Օրերով ու տարիներով
խռովութեան մէջ պիտի ըլլաք ,
ո՛վ անհոգ կնիկներ . քանզի այգե-
կութը կորսուեցաւ . հունձքի ժա-
11 մանակ պիտի չգայ ։ Ո՛վ հանգիստ
կնիկներ՝ դողացէք . ո՛վ անհոգ
կնիկներ՝ խռովութեան մէ՛ջ ին-
կէք . հանուեցէ՛ք ու մերկ եղէք ,
ու մէջքերնիդ քուրձ կապեցէք ։
12 Ցանկալի արտերուն ու պտղաբեր
որթին համար՝ § կուրծքերնին պի-
13 տի ծեծեն՝՝ ։ Իմ ժողովուրդիս
երկրին վրայ փուշ ու ցախ պիտի
բուսնի . նաև ամէն ուրախութեան
տուներուն վրայ ուրախ քա-
14 ղաքին մէջ ։ Քանզի պալատները
երեսէ պիտի ձգուին . աղմկայոյզ
քաղաքը պիտի թողուի . բերդերը
ու պարիսպները յաւիտեան քա-
րայրներ պիտի ըլլան , ցիռերու
զուարճութեան համար , ու խա-
շինքներու արօտ ըլլալու համար ,
15 Մինչև որ Հոգին մեր վրայ Հոգի
թափուի , ու անապատը պըտ-
ղաբեր արտի դառնայ , և պտղաբեր
16 արտը անտառ համարուի ։ Ան ա-
տենը անապատին մէջը իրաւունք
պիտի բնակի , ու պտղաբեր արտին
մէջը արդարութիւն պիտի հանգչի ։
17 ՚ Եւ արդարութեան գործը՝ խաղա-
ղութիւն , ու արդարութեան ար-
դիւնքը՝ հանգիստ ու ապահովու-
18 թիւն պիտի ըլլայ յաւիտեան ։ Եւ
իմ ժողովուրդս խաղաղաւէտ բնա-
կութեան մէջ , ու ապահով վրան-
ներու մէջ , և հանդարտ հանգըս-
տութեան մէջ պիտի բնակի ։
19 Բայց կարկուտ պիտի իջնէ անտ-
տառին վրայ , ու քաղաքը բոլորո-
20 վին պիտի խոնարհի ։ Երանի ձեզի՝
որ ամէն ջուրերու քով կը ցանէք ,

Ն . ք . ՂԲ . ՛ ԽՐ 713
Ղ Ովս . ԺԱ . 10 ։ Ամովս . Գ . 8 ։
Ե Գլ . ԽԲ . 13 ։
Ը Բ Օր . ԼԲ . 11 ։ Սաղ . ՂԱ . 4 ։
Բ Սաղ . ԼԵ . 40 ։
* Կամ՝ խնայէ ,
Ժ Ովս . Թ . 9 ։
Ի Գլ . Բ . 20 ։ Լ . 22 ։
Լ Գ Թագ . ԺԲ . 39 ։
Խ Տես Դ Թագ . ԺԹ . 35 , 36 ։ Գլ . ԼԷ . 36 ։
Ծ Գլ . ԼԷ . 37 ։
† Կամ՝ բերդէն
⁼ Տես Սաղ . ԽԵ . 1 , Հ ։ Երեմ . ԻԳ . 5 ։ Ովս . Գ . 5 ։ Զաք . Թ . 9 ։
‡ Կամ՝ ամէն մէկը
Ք Գլ . Դ . 6 ։ ԻԵ . 4 ։
Ք Գլ . ԻԹ . 18 ։ ԼԵ . 5 ։ 6 ։

Ն . ք . ՂԲ . ԽՐ 713 .
‖ Եբր . գործիքները
⸗ Ամովս . Զ . 1 ։
§ Եբր . ըստինքներուն վրայ պիտի ողբան ։
Ի Գլ . ԼԴ . 13 ։ Ովս . Թ . 6 ։
Ղ Գլ . ԻԲ . 2 ։
Ի Գլ . ԻԷ . 10 ։
Է Սաղ . ՃԴ . 30 ։ Յովել . Բ . 28 ։
Բ Գլ . ԻԹ . 17 ։ ԼԵ . 2 ։
Ժ Յակ . Գ . 18 ։
Ի Գլ . Լ . 30 ։
Լ Զաք . ԺԱ . 2 ։

Ն. Ք. Գ. Ե. Ր 713

ու Եեզան և իշուն ոտքը հոն *կոխել կու տաք՝ ։

ե Գլ. Լ. 24։
* Եբր. կը խրկէք ։

## ԳԼ. ԼԳ

1 Եկեղեցիին թշնամիներուն դէմ Աստուծոյ կատարելու դատաստանները ։ 13 Բարեպաշտներուն արտօնութիւնները ։

ա Գլ. իա. 2։ Ամբ. բ. 8։
բ Յայտ. ժգ. 10։
գ Գլ. իե. 9։

1 Վայ քեզի աո՛վ կործանող՝ որ դուն
չկործանուեցար . ու վա՜յ քեզի
ո՛վ յափշտակող՝ որ քեզ չյափշտակեցին . բերբոր դուն կործանելը լմնցնես , քեզ պիտի կործանեն . երբոր յափշտակելէն դադարիս , քեզ պիտի յափշտակեն ։
2 Ո՛վ Տէր՝ մեզի ողորմէ , գքեզի
կը յուսանք . ամէն առտու անոնց
զօրութիւն եղիր , ու նեղութեան
ժամանակը մեզի փրկութիւն եղիր ։
3 Աղմուկին ձայնէն ժողովուրդները
կը փախչին . քու բարձրանալէդ
ազգերը կը ցրուին ։
4 Եւ ձեր աւարը՝ թրթուրին ժողվելուն պէս պիտի ժողվեն . անոր
վրայ՝ մարախներուն ցատկելուն
5 պէս պիտի ցատկեն ։ դՏէրը բարձրացած է . վասն զի բարձրերը կը
բնակի . Սիօնը իրաւունքով ու
6 արդարութիւնով լեցուց ։ Եւ քու
ժամանակներուդ հաստատութիւնը , ու փրկութեանդ զօրութիւնը՝
իմաստութիւն ու գիտութիւն
պիտի ըլլայ . Տէրոջը վախը անոր
գանձն է ։
7 Ահա անոնց զօրաւորները դուրսը
կ'աղաղակեն . եխաղաղութեան
դեսպանները դառնապէս կու լան ։
8 զԲանուկ ճամբաները ամայի եղան .
ճամբայէն անցնող չմնաց . էանիկա
ուխտը աւրեց . քաղաքները կ'անարգէ . մարդը բանի տեղ չսե-
9 պեր ։ ըԵրկիրը սուգ կը բռնէ , ու
կը նուաղի . Լիբանանը ամչցաւ ,
ու թառամեցաւ . Սարոնը անապատի պէս եղաւ , և Բասանը ու
10 Կարմեղոսը կը թօթվուին ։ թՀիմա
պիտի ելլեմ՝ կ'ըսէ Տէրը , հիմա
պիտի փառաւորուիմ , հիմա պիտի
11 բարձրանամ ։ ժԴուք յարդով
պիտի յղանաք , ու մղեղ պիտի
ծնանիք . ու ձեր †շունչը կրակի
12 պէս ձեզ պիտի ուտէ ։ Եւ ժողովուրդները կիրի այրուելուն պէս
պիտի ըլլան . անոնք կրակի մէջ՝
իկտրուած փուշերու պէս պիտի
13 այրին ։ ԼՈ՛վ հեռու եղողներ՝ իմ
ըրածս լսեցէք . ու մօտ եղողներ՝
14 իմ զօրութիւնս գիտցէք ։ Սիօնի
մէջ մեղաւորները կը վախնան .
կեղծաւորները դող կը բռնէ ։
Մեզմէ ո՛վ պիտի բնակի մաշող
կրակին մէջը . մեզմէ ո՛վ պիտի
բնակի յաւիտենական բոցերուն
15 մէջը ։ խԱրդարութեամբ քալողը , և ուղղութիւն խօսողը , անիրաւութեան շահը մերժողը ,
կաշառք առնելէն ձեռքերը թօթվողը , արիւնահեղութեան խօսքերը
չլսելու համար ականջները գոցողը , ու ծչարութիւնը չտեսնելու
16 համար՝ աչքերը գոցողը , Անիկայ
բարձրերը պիտի բնակի . անոր
բերդը ամուր վէմերու վրայ պիտի
ըլլայ . անոր հաց պիտի տրուի ,
ու անոր ջուրը անպակաս պիտի
17 ըլլայ ։ Քու աչքերդ՝ թագաւորը
իր վայելչութեամբը պիտի տեսնեն . անոնք հեռաւոր երկիր պիտի
18 նային ։ Քու սիրտդ վախերը պիտի
մտածէ . կՈ՞ւր է դպիրը , ո՞ւր է
կշռողը , ո՞ւր է աշտարակները գրողը ։
19 հԴուն պիտի չտեսնես այն
խիստ ժողովուրդը , ձդժուարիմաց
ու անծանօթ լեզու ունեցող ժողովուրդը , թոթովախօս ու անիմանալի լեզուով ժողովուրդը ։ Մեր
20 տօնախմբութեանց քաղաքին՝
ղՍիօնին նայէ . քու աչքերդ ճԵրուսաղէմը պիտի տեսնեն , մբերկ
հանգիստ բնակարան մը ու չխախտուելու վրան մը , յորուն ցիցերը
յաւիտեան պիտի չշարժին , ու
չուանները բնաւ պիտի չկտրին ։
21 Հապա հոն փառաւորեալ Տէրը
պիտի ըլլայ մեզի՝ լայնատարած
գետերու ու վտակներու տեղ , ուր
որ թիաքարշ նաւ պիտի չմտնէ ,
և անկէ մեծ նաւ պիտի չանցնի ։
22 Քանզի մեր դատաւորը Տէրն է .
մեր յօրէնսդիրը Տէրն է . նմեր
թագաւորը Տէրն է . անիկայ մեզ
պիտի ազատէ ։
23 Քու չուաններդ թուլցան . իրենց կայմին խարիսխը չկրցան հաստատ բռնել . առագաստը չկրցան
բանալ . ան ատենը մեծ աւար
բաժնուեցաւ . մինչև անդամ կաղերը աւար առին ։ Ու հոն բնա-
24 կողը պիտի չըսէ թէ՝ Հիւանդ եմ .
շհոն բնակող ժողովուրդին անօրէնութիւնը պիտի թողուի ։

## ԳԼ. ԼԴ

1 Ան դատաստանները՝ որոնցմով Աստուած իր եկեղեցիին համար վրէժխնդրութիւն պիտի ընէր ։ 11 Եկեղեցւոյն թշնամեացը կործանումը ։ 16 Աս մարգարէութիւններուն ստուգութիւնը ։

1 Ո՛վ ազգեր՝ ամօտեցէ՛ք որ լսէք ,
ո՛վ ժողովուրդներ՝ ականջ
տուէք . բերկիրը՝ ու անոր լիութիւնը , աշխարհքը՝ ու անոր բոլոր
‡բնակիչները թող մտիկ ընեն ։
2 Վասն զի Տէրոջը բարկութիւնը ամէն ազգերուն վրայ , ու սրտմտութիւնը անոնց բոլոր զօրքերուն վրայ է . անիկայ զանոնք նզովեց .

դ Սաղ. ղէ. 9։
ե Գ Թագ. ժը. 18, 37։
զ Դատ. ե. 6։
է Գ Թագ. ժը. 14-17։
ը Գլ. իդ. 4։
թ Սաղ. ժբ. 5։
ժ Սաղ. Է. 14։ Գլ. ծթ. 4։
† Կամ՝ բարկութիւնը
ի Գլ. Թ. 18։
Լ Գլ. խթ. 1։
խ Սաղ. ժե. 2։ իդ. 4։
ծ Սաղ. ճժթ. 37։
կ Ա Կոր. ա. 20։
հ Դ Թագ. ժթ. 32։
ձ Բ Օր. իը. 49, 50։ Երեմ. ե. 15։
ղ Սաղ. խը. 12։
ճ Սաղ. խզ. 5։ ծիե. 1, 2։
մ Գլ. լէ. 33։
յ Յակ. դ. 12։
ն Սաղ. ծթ. 18։
շ Երեմ. ծ. 20։
ա Սաղ. խԹ. 1։
բ Բ Օր. լբ. 1։
‡ Եբր. սերունդը

Ն․ Ք․ ԴՔ․ Եւր 713

[գ] Յովել․ ը․ 20։
[դ] Սաղ․ ճբ․ 26։ Եզեկ․ լբ․ 7, 8։ Յովել․ բ․ 31։ գ․ 15։ Մատ․ իդ․ 29։ բ Պետ․ գ․ 10։
[ե] Յայտ․ զ․ 14։
[զ] ԳԼ․ ժդ․ 12։
[է] Յայտ․ զ․ 13։
[ը] Երեմ․ խզ․ 10։
[թ] Երեմ․ խթ․ 7, եւն, Մաղ․ ա․ 4։
[ժ] ԳԼ․ կգ․ 1։ Երեմ․ խթ․ 13։ Սոփ․ ա․ 7։
* կամ՝ վայրենի ցուլերը։
[ի] ԳԼ․ կգ․ 4։
[լ] Տես բՕր․ իթ․ 23։
[խ] Յայտ․ ժդ․ 11։ ժը․ 18։ ժթ․ 3։
[ծ] Մաղ․ ա․ 4։
[կ] ԳԼ․ ժգ․ 23։ Սոփ․ բ․ 14։ Յայտ․ ժը․ 2։
[հ] Դ Թագ․ իա․ 13։ Ողբ․ բ․ 8։
[ձ] ԳԼ․ լգ․ 13։ Ովս․ թ․ 6։
[ղ] ԳԼ․ ժգ․ 21, եւն։

3 զանոնք սպանման մատնեց ։ Եւ
անոնց սպաննուածները պիտի նե-
տուին . ու [գ]անոնց դիակներէն գէշ
հոտ պիտի ելլէ . և անոնց արիւնէն
4 լեռները պիտի հալին ։ Ու [դ]եր-
կինքին բոլոր զօրքերը պիտի հալին .
ու երկինքը [ե]մագաղաթի պէս պի-
տի գալարուի . [զ]Եւ անոր բոլոր զօր-
քերը վար պիտի թափին , ինչպէս
որ տերևը որթէն կը թափի , ու ինչ-
պէս որ [է]թուզը թզենիէն կը թափի ։
5 Քանզի [ը]իմ սուրս երկինքի մէջ
արբեցած է . ահա անիկայ [թ]Եդովմին
վրայ ու իմ նզոված ժողովուրդիս
վրայ՝ դատաստան ընելու պիտի իջ-
6 նէ ։ Տէրոջը սուրը արիւնով լե-
ցուած է , ու ճարպով եղոտած է .
գառներուն և նոխազներուն արիւ-
նովը , ու խոյերուն երիկամանց
ճարպովը . քանզի [ժ]Տէրը Բոսրայի
մէջ զոհ ունի , ու Եդովմի երկրին
7 մէջ մեծ սպանդ ։ Եւ անոնց հետ
պիտի իյնան *միեղջերուները , ու
զուարակները ցուլերուն հետ . և
անոնց երկիրը արիւնով պիտի գի-
նովնայ , ու անոնց հողը ճարպով
8 պիտի պարարտանայ ։ Քանզի Տէ-
րոջը [ի]վրէժխնդրութեան օրը՝ ու
Սիոնի վէճին համար՝ հատուցման
9 տարին է ։ [լ]Եւ անոր գետերը՝
ձիւթի , ու հողը ծծումբի պիտի
դառնայ . և անոր երկիրը վառած
10 ձիւթ պիտի ըլլայ . Գիշեր ու ցո-
րեկ պիտի չմարի . [խ]անոր ծուխը
յաւիտեան պիտի ելլէ . և [ծ]դարէ
'ի դար աւերակ պիտի մնայ . յա-
ւիտեանս յաւիտենից անկէ անցնող
11 պիտի չըլլայ ։ [կ]Հապա զանիկայ
հաւալուսները ու ոզնիները պիտի
ժառանգեն . և հոն քաջահաւը ու
ագռաւը պիտի բնակի . ու [հ]անոր
վրայ դատարկութեան լարը և ու-
նայնութեան կշիռը պիտի քաշուի ։
12 Անոր ազնուականները թագաւո-
րութեան պիտի կանչեն , բայց հոն
մէկը պիտի չգտնուի . ու անոր բո-
լոր իշխանները պիտի ոչնչանան ։
13 Եւ [ձ]անոր պալատներուն մէջը փու-
շեր , ու անոր պարիսպներուն վրայ
եղինճ ու եկքան պիտի բուսնի . և
[ղ]ճագարներու բնակարան , ու ջայ-
լամներու գաւիթ պիտի ըլլայ ։
14 Եւ վայրենի կատուները բորենի-
ներուն պիտի հանդիպին , ու այ-
ծամարդները իրարու ձայն պիտի
տան , և յուշկապարիկները հոն
պիտի հանգչին , ու հոն իրենց հան-
15 գիստ տեղ պիտի գտնեն ։ Հոն
նետ օձը իր բոյնը պիտի շինէ , ու
հաւկիթ պիտի ածէ , և իր ձագերը
պիտի հանէ , ու իր հովանիին տա-
կը առնելով՝ պիտի խնամէ . և ու-
րուրները հոն պիտի ժողվուին՝ ամէն
16 մէկը իր ընկերին հետ ։ [ճ]Տէրոջը
գիրքին մէջը փնտռեցէ՛ք , ու կար-
դացէ՛ք . ասոնց մէկը պիտի չպակ-
սի . մէկուն ընկերը պակաս պիտի
չըլլայ . վասն զի իր բերանը հրա-
մայեր է , ու իր Հոգին պիտի ժող-
17 վէ զանոնք ։ Եւ ինքը անոնց հա-
մար վիճակ ձգեր է . ու իր ձեռքը
զանիկայ լարով բաժներ է անոնց .
զանիկայ յաւիտեան պիտի ժա-
ռանգեն . դարէ 'ի դար անոր մէջը
պիտի բնակին ։

## ԳԼ․ ԼԵ

1 Քրիստոսի թագաւորութեանը ուրախալի կերպով ծաղկիլը ։ 3 Տկարները կը քաջալերուին աւետարանին արտօնութիւններովը ։

1 [ա]Անապատը ու չոր երկիրը †պիտի
ուրախանայ . և անբնակ եր-
կիրը պիտի ցնծայ՝ ու շուշանի պէս
2 պիտի ծաղկի ։ [բ]Անիկայ բոլորովին
պիտի ծաղկի , և ցնծութեամբ ու
երգերով պիտի ուրախանայ . անոր
պիտի տրուի Լիբանանին փառքը ,
Կարմեղոսին ու Սարոնին վայելչու-
թիւնը . անոնք Տէրոջը փառքը՝
մեր Աստուծոյն վայելչութիւնը
պիտի տեսնեն ։
3 [գ]Թուլցած ձեռքերը ուժովցու-
ցէ՛ք , ու դողդոջուն ծունկերը զօ-
4 րացուցէ՛ք . Թուլասիրտներուն ը-
սէ՛ք . Ուժովցէ՛ք , մի՛ վախնաք .
ահա ձեր Աստուածը վրէժխնդրու-
թիւնով՝ ու Աստուծոյ հատուցու-
մովը կու գայ . անիկայ պիտի գայ ,
5 ու ձեզ ազատէ ։ Ան ատենը [դ]կոյ-
րերուն աչքերը պիտի բացուին , ու
[ե]խուլերուն ականջները պիտի բա-
6 ցուին ։ Ան ատենը [զ]կաղը եղջե-
րուի պէս պիտի ցատկռտէ , ու
[է]համրին լեզուն օրհնութիւն պիտի
երգէ . քանզի անապատի մէջ [ը]ջու-
րեր , ու անբնակ երկրի մէջ հե-
7 ղեղներ պիտի բղխին ։ Եւ խոր-
շակահար երկիրը՝ լիճի պիտի դառ-
նայ , ու ծարաւուտ երկիրը՝ ջուրի
աղբիւրներ պիտի բղխէ . ու [թ]ճա-
գարներուն պառկած բնակարանը՝
եղէգի ու կնիւնի գաւիթ պիտի
8 ըլլայ ։ Եւ հոն պողոտայ ու ճամ-
բայ պիտի ըլլայ , որ անիկայ սուրբ
ճամբայ պիտի ըսուի . [ժ]անկէ պիղծ
մէկը պիտի չանցնի . հապա անի-
կայ անոնց համար պիտի ըլլայ . ան
ճամբուն մէջ քալողը , ու յիմար-
9 ները անգամ պիտի չմոլորին ։ [ի]Հոն
առիւծ պիտի չըլլայ , ու անոր վրայ
պատառող գազան պիտի չելլէ , և
հոն պիտի չգտնուի , հապա փրր-
10 կուածները հոն պիտի քալեն ։ Ու
[լ]Տէրոջը փրկածները պիտի դառ-
նան , ու երգերով Սիոն պիտի գան .
և անոնց գլխուն վրայ յաւիտենա-

Ն․ Ք․ ԴՔ․ Եւր 713

[ճ] Մաղ․ գ․ 16։

[ա] ԳԼ․ ծե․ 12։
† կամ՝ անոնց համար պիտի
[բ] ԳԼ․ լբ․ 15։
[գ] Յոբ․ դ․ 3, 4։ Եբր․ ժբ․ 12։
[դ] ԳԼ․ իթ․ 18։ լբ․ 3, 4։ խբ․ 7։ Մատ․ թ․ 27, եւն։ ժա․ 5։ ժբ․ 22։ ի․ 30, եւն։ իա․ 14։ Յովհ․ թ․ 6, 7։
[ե] Մատ․ ժա․ 5։ Մար․ է․ 32, եւն։
[զ] Մատ․ ժա․ 5։ ժե․ 30։ իա․ 14։ Յովհ․ ե․ 8, 9։ Գործ․ գ․ 2, եւն։ ը․ 7։ ժդ․ 8, եւն։
[է] ԳԼ․ լբ․ 4։ Մատ․ թ․ 32, 33։ ժբ․ 22։ ժե․ 30։
[ը] ԳԼ․ խա․ 18։ խգ․ 19։ Յովհ․ է․ 38, 39։
[թ] ԳԼ․ լդ․ 13։
[ժ] ԳԼ․ ծբ․ 1։ Յովել․ գ․ 17։ Յայտ․ իա․ 27։
[ի] Ղև․ իզ․ 6։ ԳԼ․ ժա․ 9։ Եզեկ․ լդ․ 25։
[լ] ԳԼ․ ծա․ 11։

Ն · Ք · ԴՔ · Իրր 713

կան ուրախութիւն պիտի ըլլայ ·
անոնք ցնծութիւն ու ուրախու-
թիւն պիտի ստանան · և Ի տրտմու-
թիւնը ու հեծութիւնը անոնցմէ
պիտի հեռանայ ։

Ի Գլ · ԽԵ · Տ · ԿԵ · 19 · Ցայտ · Է · 17 · Խա · 4 ։

## ԳԼ · ԼԶ

1 Սենեքերիմ Թագաւորը Յուդայի վրայ կը յարձակի ։ 4 Ռափսակ' Սենեքերիմէն խրկուած · հայհոյալից յորդորանքներով ժողովուրդը ապստամբութեան կը գրգռէ · 22 Անոր խօսքերը Եզեկիային կը պատմուին ։

713

Ա Դ Թագ · ԺԸ · 18 · 17 · Բ Մն · ԼԲ · 1 ։

1 Ու Ա եղաւ որ Եզեկիա Թագաւո-
րին չորեքտասաներորդ տարին'
Ասորեստանի Սենեքերիմ Թագա-
ւորը' Յուդայի բոլոր պարսպաւոր
քաղաքներուն վրայ ելաւ , ու զա-
2 նոնք առաւ ։ Եւ Ասորեստանի

710

Թագաւորը' Ռափսակը շատ զօր-
քով Լաքիսէն Երուսաղէմ խրկեց
Եզեկիա Թագաւորին · ու անիկայ
Թափիչի ագարակին ճամբան եղող
վերի աւազանին ջրմուղին վրայ
3 կայնեցաւ ։ Եւ Քեղկիայի որդին
Եղիակիմ' պալատին հազարապե-
տը , ու Սեբնա ատենադպիրը , ու
յիշատակաց դպիր Ասափի որդին
Յովաքը' անոր ելան ։

Բ Դ Թագ · ԺԸ · 19 , ...

4 Բ Եւ Ռափսակ անոնց ըսաւ · Ե-
զեկիային ըսէք · Մեծ Թագաւորը'
Ասորեստանի Թագաւորը այսպէս
կ'ըսէ · ի՞նչ է ատ յոյսը' որուն
5 դուն կ'ապաւինիս · Դուն ըսիր ·
Պատերազմի համար խորհուրդ ու
զօրութիւն ունիմ · բայց շրթուն-
քի խօսքեր են · հիմա որո՞ւն ա-
պաւինելով' ինծմէ ապստամբեցար ։

Գ Եզեկ · ԻԹ · 6 · 7 ։

6 Ահա դուն Գ ան ջախջախած եղէգէ
ցուպին' Եգիպտոսին ապաւինեցար ,
որ եթէ անոր մէկ մարդ մը կռթը-
նի , ձեռքը պիտի մտնէ , ու զանի-
կայ պիտի ծակէ · Եգիպտոսի Փա-
րաւոն Թագաւորը բոլոր իրեն ա-
7 պաւինողներուն այնպէս է ։ Բայց
թէ որ ինծի ըսես թէ' Մենք մեր
Եհովայ Աստուծոյն կ'ապաւինինք ·
անիկայ ան չէ՞ , որուն բարձր տե-
ղուանքը ու սեղանները Եզեկիան
վերցուց , և Յուդային ու Երուսա-
ղէմին ըսաւ · Միայն աս սեղանիս
8 առջևը երկրպագութիւն ըրէք ։ Ու
հիմա իմ տիրոջս · Ասորեստանի
Թագաւորին * հետ հաշտուէ " , ու

* Կամ' պատանդ տուր ։

քեզի երկու հազար ձի տամ , թէ
որ դուն քու կողմանէդ անոնց վրայ
9 հեծնողներ դնելու կարող ես ։ Եւ
իմ տիրոջս պինտ պզտիկ ծառանե-
րէն մէկ կուսակալին ի՞նչպէս կրնաս
դէմ դնել , որ դուն կառքերու ու
ձիերու համար Եգիպտոսին կ'ա-
10 պաւինիս ։ Եւ հիմա աս երկրիս
վրայ արդեօք առանց Եհովայի
հրամանի՞ն ելեր եմ' զանիկայ աւրե-
լու համար · ինծի Եհովան ըսաւ ·

Ն · Ք · ԴՔ · 710

Ան երկրին վրայ ելիր , ու զանիկայ
աւրէ' ։
11 Ու Եղիակիմը , և Սեբնան , ու
Յովաքը' Ռափսակին ըսին · Շը-
նորհք ըրէ , քու ծառաներուդ հետ
† Ասորերէն խօսէ , քանզի մենք կը
հասկընանք , ու մեզի հետ Եբրայե-
ցերէն մի' խօսիր որ պարսպին վրայ
12 եղող ժողովուրդը լսէ ։ Բայց
Ռափսակ ըսաւ · Միթէ աս խօս-
քերը խօսելու համար իմ տէրս զիս
քու տիրոջդ ու քեզի՞ միայն խրկեց ·
չէ՞ որ աս մարդիկներուն ալ' որոնք
պարսպին վրայ կը նստին' ձեզի հետ
իրենց աղբը ուտելու , ու իրենց մէ-
զը խմելու ։

† Կամ' Ասորերէն

13 Եւ Ռափսակ ոտք ելաւ , ու մեծ
ձայնով մը Եբրայեցերէն աղաղա-
կեց · ու ըսաւ · Մեծ Թագաւորին'
Ասորեստանի Թագաւորին խօսքերը
14 մտիկ ըրէք · Թագաւորը այսպէս
կ'ըսէ · Եզեկիան ձեզ չխաբէ ·
քանզի անիկայ չկրնար ձեզ ազա-
15 տել ։ Ու Եզեկիան ձեզ Եհովա-
յին չյուսացընէ' ըսելով · Եհովան
մեզ անշուշտ պիտի ազատէ , ու
աս քաղաքը Ասորեստանի Թագա-
16 ւորին ձեռքը պիտի չտրուի ։ Եզե-
կիային մտիկ մի' ընէք · քանզի Ա-
սորեստանի Թագաւորը այսպէս
կ'ըսէ · Ինծի հետ հաշտութիւն
ըրէք , ու ինծի' ելէք · Դ և , ամէն
մարդ իր որթէն' ու ամէն մարդ իր
թզենիէն ուտէ , և ամէն մարդ իր

Դ Զաք · Գ · 10 ։

17 ջրհորին ջուրէն խմէ , Մինչև որ ես
գամ , ու ձեզ ձեր երկրին պէս մէկ
երկիր մը' ցորենի ու գինիի երկիր
մը' հացի ու այգիներու երկիր մը
18 տանիմ ։ Զգուշ որ Եզեկիա ձեզ
գլխէ հանէ' ըսելով · Եհովան մեզ
պիտի ազատէ ։ Միթէ ազգաց
աստուածները Ասորեստանի Թա-
գաւորին ձեռքէն' ամէն մէկը իր եր-
19 կիրը ազատե՞ց ։ Եմաթի ու Ար-
փաթի աստուածները ո՞ւր են · Սե-
փարուիմի աստուածները ո՞ւր են ·
միթէ անոնք Սամարիան իմ ձեռքէս
20 ազատեցի՞ն · Աս երկիրներուն ա-
մէն աստուածներէն ո՞րը իր երկիրը
իմ ձեռքէս ազատեց , որ Եհովան
Երուսաղէմը իմ ձեռքէս ազատէ ։
21 Ու անոնք լուռ կեցան , և անոր ա-
մենևին պատասխան մը չտուին ·
քանզի Թագաւորը հրամայեր էր ,
ըսելով · Անոր պատասխան մի'
տաք ։
22 Ու Քեղկիայի որդին Եղիակիմ'
պալատին հազարապետը , և Սեբ-
նա ատենադպիրը , ու յիշատակաց
դպիր Ասափի որդին Յովաքը' հան-
դերձնին պատռած' Եզեկիային գա-
ցին , ու Ռափսակին խօսքերը անոր
պատմեցին ։

Ն. Ք. ԴՔ.
710

## ԳԼ. ԼԷ

1 Եզեկիա սուգ ընելով՝ Եսայիին մարդ կը խըր-
կէ որ իրենց համար աղօթք ընէ ։ 6 Եսայի
զանոնք կը մխիթարէ ։ 8 Սենեքերիմ՝ Թա-
րակա թագաւորին դէմ պատերազմելու գա-
ցած ատենը՝ նախատալից նամակ մը կը խրկէ
Եզեկիային ։ 14 Եզեկիային աղօթքը ։ 21 Ե-
սայիին մարգարէութիւնը՝ Սենեքերիմին հը-
պարտութեանը ու կործանմանը, և Սիոնին
ըլլալու բարիքին վրայով ։ 36 Հրեշտակ մը
Ասորեստանի զօրքերը կը ջարդէ ։ 37 Սենե-
քերիմ իր որդւոցմէն կը սպաննուի Նինուէի
մէջ ։

ա Դ Թագ. ԺԹ. 1, &c.

1 Ու ᵃերբոր Եզեկիա թագաւորը
լսեց, իր հանդերձները պատ-
ռեց, ու քուրձ հագաւ, և Տէրոջը
2 տունը մտաւ ։ Ու Եղիակիմ՝ պա-
լատին հազարապետը, և Սերնա
ատենադպիրը, ու քահանաներուն
ծերերը քուրձեր հագած՝ Ամովսի
որդւոյն Եսայի մարգարէին խրկեց ։
3 Եւ անոր ըսին ։ Եզեկիան այսպէս
կ'ըսէ ։ Այսօր նեղութեան, կշտամ-
բանաց ու նախատանաց օր է ։ քան-
զի տղաքը մինչև ծնանելու վայր-
կեանը հասան, բայց ծնանելու ոյժ
4 չկայ ։ Կարելի է որ քու Տէր Աս-
տուածդ Ռափսակին խօսքերը լսէ,
որն որ իր տէրը Ասորեստանի թա-
գաւորը խրկեց՝ կենդանի Աստուա-
ծը նախատելու համար, ու քու
Տէր Աստուածդ ան իր լսած խօս-
քերուն համար յանդիմանութիւն
տայ ։ ուրեմն դուն գտնուող մնա-
5 ցորդին համար աղօթք ըրէ ։ Ու
Եզեկիա թագաւորին ծառաները
6 Եսայիին գացին ։ Ու Եսայի ա-
նոնց ըսաւ ։ Ձեր տիրոջը սա՛նկ
ըսէք ։ Տէրը այսպէս կ'ըսէ ։ Մի՛
վախնար ան լսած խօսքերէդ, ո-
րոնցմով Ասորեստանի թագաւորին
7 ծառաները զիս հայհոյեցին ։ Ահա՛
ես անոր վրայ մէկ ոգի մը կը խըր-
կեմ, ու մէկ լուր մը լսելով՝ իր եր-
կիրը պիտի դառնայ, ու զանիկայ
իր երկրին մէջը սրով պիտի կործա-
նեմ ։

8 Եւ Ռափսակ դարձաւ, ու Ասո-
րեստանի թագաւորը գտաւ, որ
Լեբնայի հետ կը պատերազմէր ։
վասն զի լսած էր որ Լաքիսէն
9 չուեր է ։ Ու Սենեքերիմ՝ Եթե-
ովպացւոց Թարակա թագաւորին
համար լսեց, որ կ'ըսէին ։ Ահա՛
անիկայ քեզի հետ պատերազմելու
ելեր է ։ ու երբոր ասիկայ լսեց,
Եզեկիային դեսպաններ խրկեց՝ ը-
10 սելով ։ Յուդայի Եզեկիա թա-
գաւորին այսպէս խօսիք ու ըսէք ։
Ան քու Աստուածդ՝ որուն դուն
ապաւիներ ես, թող քեզ չխաբէ՝
ըսելով ։ Երուսաղէմը Ասորեստանի
թագաւորին ձեռքը պիտի չտրուի ։
11 Ահա դուն լսեցիր ի՛նչ որ Ասո-
րեստանի թագաւորները բոլոր եր-
կիրներուն ըրին, ու ի՛նչպէս զա-
նոնք բոլորովին կործանեցին, ու
12 հիմա դո՞ւն պիտի ազատիս ։ Միթէ
իմ հայրերուս կործանած ազգե-
րուն, այսինքն Գոզանին, Խառա-
նին, Ռեսեփին, ու Թելասարի մէջ
եղող Եդեմի որդւոցը աստուած-
13 ները զանոնք ազատեցի՞ն ։ Ո՞ւր
է ᵇԵմաթի թագաւորը, ու Ար-
փաթի թագաւորը, ու Սեփա-
րուիմ քաղաքին, Անային և Աւա-
յին թագաւորը ։

ᵇ Երեմ. ԽԹ. 23 ։

14 Ու Եզեկիա նամակը դեսպաննե-
րուն ձեռքէն առաւ, ու զանիկայ
կարդաց, և Տէրոջը տունը ելաւ ։
ու Եզեկիա՝ Տէրոջը առջևը *բացաւ
15 անիկայ ։ Ու Եզեկիա Տէրոջը առ-
16 ջևը աղօթք ըրաւ, ու ըսաւ ։ Ո՛վ
Տէր զօրութեանց՝ Աստուած Իս-
րայէլի, որ քերովբէներուն մէջը կը
նստիս ։ երկրիս ամէն թագաւորու-
թիւններուն վրայ Աստուած մինակ
դուն ես ։ երկինքը ու երկիրը դուն
17 ստեղծեցիր ։ ᶜՈ՛վ Տէր՝ ականջդ
խոնարհեցո՛ւր ու լսէ՛ ։ ո՛վ Տէր՝ աչ-
քերդ բա՛ց ու նայէ՛, և լսէ՛ Սենե-
քերիմին բոլոր խօսքերը, որ խրկեց
կենդանի Աստուածը նախատելու
18 համար ։ Ո՛վ Տէր՝ իրաւցընէ Ա-
սորեստանի թագաւորները՝ բոլոր
†ազգերը ու անոնց երկիրը աւրե-
19 ցին, Եւ անոնց աստուածները կրա-
կի տուին ։ վասն զի անոնք Աս-
տուած չէին, հապա մարդու ձե-
ռագործ՝ փայտ ու քար էին ։ անոր
20 համար զանոնք կորսնցուցին ։ Եւ
հիմա դուն ո՛վ Տէր Աստուած մեր՝
ազատէ՛ մեզ անոր ձեռքէն, որպէս
զի երկրիս բոլոր թագաւորութիւն-
ները գիտնան, որ Տէրը միայն դուն
ես ։

* Կամ՝ տա-
րածեց

ᶜ Դան. Թ. 18 ։

† Եբր. եր-
կիրները

21 Ու Ամովսի որդին Եսային՝ Եզե-
կիային մարդ խրկեց՝ ըսելով ։ Իս-
րայէլին՝ Տէր Աստուածը այսպէս
կ'ըսէ ։ Որովհետև Ասորեստանի
Սենեքերիմ թագաւորին համար
22 աղօթք ըրիր ինծի, Անոր վրայով
Տէրոջը ըսած խօսքը աս է ։ Սիոնի
կոյս աղջիկը քեզ անարգեց, քեզ
ծաղր ըրաւ ։ Երուսաղեմի աղջիկը
23 քու ետևէդ գլուխ շարժեց ։ Դուն
ո՞վ նախատեցիր ու հայհոյեցիր,
ու որո՞ւն վրայ ձայնդ վերցուցիր,
և աչքերդ Իսրայէլի Սուրբին դէմ
24 վեր վերցուցիր ։ Քու ծառանե-
րուդ ձեռքովը Տէրը նախատելով՝
ըսիր ։ Իմ կառքերուս շատութիւ-
նովը լեռներուն բարձրութիւնը՝
Լիբանանու քովերը ելայ, ու անոր
բարձր եղևինները և ընտիր մայրերը
‡պիտի կտրեմ" ։ ու անոր խիստ
բարձր ծայրը՝ անոր Կարմեղոսին
25 անտառը ‖պիտի մտնեմ" ։ Ես

‡ Կամ՝ կըտ-
րեցի ։
‖ Կամ՝ մը-
տայ ։

Ն․ Ք․ ԴՔ․ 710

փորեցի ու ջուր խմեցի, ու պաշա-
րուած տեղերուն բոլոր գետերը
ոտքերուս թաթովը ցամքեցուցի։

Դ Դ Թագ․ ԺԹ․ 25․

26 Դ Մի՞թէ լսած չե՞ս որ ասիկայ
շատոնցմէ ես շինեցի, ու առջի
օրերէն 'ի վեր ձեւակերպեցի․ հիմա
հասուցի, որ դուն պարսպաւոր
քաղաքները աւերակի հողակոյտ-
27 ներու դարձնես։ Ուստի անոնց
բնակիչներուն ձեռքը կարճ ըլլա-
լուն համար՝ զարհուրեցան ու ա-
մչցան․ անոնք դաշտի խոտի, և
կանանչ բանջարի պէս, ու տանի-
քի խոտի պէս, և դեռ չհասած ու
խորշակէն զարնուած հունձքի պէս
28 եղան։ Բայց ես քու բնակու-
թիւնդ, ելլելդ ու մտնելդ, և ինծի
ունեցած սրտմտութիւնդ գիտեմ։
29 Որովհետև ինծի ունեցած սրտ-
մտութիւնդ, ու քու ամբարտա-
ւանութիւնդ 'իմ ականջներուս
ելաւ, Եես ալ իմ կարթս քու
քիթդ՝ և իմ սանձս քու բերանդ
պիտի դնեմ, ու քու եկած ճամ-
բայէդ քեզ ետ պիտի դարձնեմ։

Ե Գլ․ Լ․ 28․ Եզեկ․ ԼԹ․ 4․

30 Եւ ասիկայ քեզի նշան ըլլայ․
աս տարի ինքիրմէ բուսածը, ու
երկրորդ տարին՝ ինկած հատերէն
բուսածը պիտի ուտէք․ ու երրորդ
տարին՝ ցանեցէք, ու հնձեցէք, և
այգիներ տնկեցէք, ու անոնց պը-
31 տուղը կերէք։ Եւ Յուդայի տա-
նը ազատուած մնացորդը՝ վարէն
արմատ պիտի արձակէ, ու վերէն
32 պտուղ պիտի տայ։ Քանզի Ե-
րուսաղէմէն մնացորդ, ու Սիօն
լեռնէն ազատուած պիտի ելլէ․
ասիկայ Զզօրաց Տէրոջը նախանձը
պիտի ընէ։

Զ Դ Թագ․ ԺԹ․ 31․ Գլ․ Թ․ 7․

33 Ասոր համար Ասորեստանի թա-
գաւորին վրայով՝ Տէրը այսպէս
կ'ըսէ․ անիկայ աս քաղաքը պիտի
չմտնէ, ու անոր նետ պիտի չնետէ,
և անոր առջևը վահանով պիտի
չգայ, ու անոր դէմ պատնէշ պիտի
34 չկանգնէ․ Իր եկած ճամբայէն ետ
պիտի դառնայ, ու աս քաղաքը
35 պիտի չմտնէ, կ'ըսէ Տէրը։ Եւ
Էաս քաղաքը պիտի պաշտպանեմ,
ու զանիկայ ազատեմ, ինծի հա-
մար՝ ու իմ ծառայիս Դաւիթին
համար։

Է Դ Թագ․ Ի․ 6․ Գլ․ ԼԹ․ 6․

36 Ու ԸՏէրոջը հրեշտակը ելաւ, և
Ասորեստանի բանակին մէջը հա-
րիւր ութսունուհինգ հազար մարդ
զարկաւ․ ու երբոր առաւօտուն
կանուխ ելան, ահա անոնց ամէնը
37 մեռած մարմիններ էին։ Եւ Ա-
սորեստանի Սենեքերիմ թագաւորը
չուեց գնաց, ու դարձաւ Նինուէի
38 մէջ նստաւ։ Ու երբոր անիկայ
իր աստուծոյն Նեսրաքին տանը
մէջ երկրպագութիւն կ'ընէր, ա-

Ը Դ Թագ․ ԺԹ․ 35․

նոր որդիքը Ադրամելէք ու Սարա-
սար զանիկայ սրով զարկին, ու
Արարատի երկիրը փախան․ և անոր
տեղը՝ անոր որդին Ասորդան թա-
գաւոր եղաւ։

Ն․ Ք․ ԴՔ․ 710

## ԳԼ․ ԼԸ

1 Եզեկիա երբոր կը լսէ թէ պիտի մեռնի, ա-
ղօթք կ'ընէ, ու իր կեանքը կ'երկըննայ։ 8 Ա-
խոստմունքին նշան մը ըլլալու համար՝ արևը
տասը աստիճան ետ կ'երթայ։ 9 Իր շնորհա-
կալութեան երգը։

713

Ա Դ Թագ․ Ի․ 1․ Բ Մն․ ԼԲ․ 24․

1 Այն օրերը Եզեկիա մահուան աս-
տիճանը հիւանդացաւ։ Ու
Ամովսի որդին Եսայի մարգարէն
անոր եկաւ, ու անոր ըսաւ․ Տէրը
այսպէս կ'ըսէ․ Բ Տանդ համար
պատուէր տուր․ քանզի դուն
մեռնելու ես, ու պիտի չապրիս։

Բ Բ Թագ․ ԺԷ․ 23․

2 Ու Եզեկիա իր երեսը պատին դար-
3 ձուց, ու Տէրոջը աղօթք ըրաւ, Ու
ըսաւ․ Գ Ո՛վ Տէր՝ կ'աղաչեմ, քու
առջևդ ճշմարտութեամբ ու կա-
տարեալ սրտով քալելս՝ և քու
աչքիդ առջևը բարի եղածը ընելս
յիշէ․ ու Եզեկիա մեծ լացով մը
լացաւ։

Գ Նեեմ․ ԺԳ․ 14․

4 Ու Տէրոջը խօսքը եղաւ Եսա-
5 յիին, ըսելով․ Գնա՛ Եզեկիային
ըսէ․ Քու հօրդ Դաւիթին Տէր
Աստուածը այսպէս կ'ըսէ․ Քու
աղօթքդ լսեցի, քու Դարտասու-
ցունքը տեսայ․ ահա՛ ես քու օ-
րերուդ վրայ տասնուհինգ տարի
6 պիտի աւելցընեմ․ Եւ քեզ ու աս
քաղաքը Ասորեստանի թագաւորին
ձեռքէն պիտի ազատեմ, և Դ աս
քաղաքին պաշտպանութիւն պիտի

Դ Գլ․ ԼԷ․ 35․

7 ընեմ։ Եւ Եասիկայ քեզի Տէրոջ-
մէն նշան ըլլայ, թէ Տէրը աս իր
8 ըսած խօսքը պիտի կատարէ․ Ահա՛
ստուերը՝ Աքազին արևու ժամա-
ցոյցին վրայ իջած աստիճաններէն՝
տասը աստիճան ետ պիտի դարձը-
նեմ․ ու արևը՝ իջած աստիճան-
ներէն տասը աստիճան ետ դար-
ձաւ։

Ե Դ Թագ․ Ի․ 9, 10, Գլ․ Է․ 11․

9 Աս է Յուդայի Եզեկիա թագա-
ւորին գրածը, որ իր հիւանդանա-
լուն ու հիւանդութենէ ելլելուն
ատենը գրեց։
10 Ես ըսի․ Իմ օրերուս *հանդիստ
ժամանակին" մէջ՝ գերեզմանին
դռները պիտի երթամ․ մնացած
11 տարիներէս զրկուեցայ։ Ըսի թէ՝
Տէրը պիտի չտեսնեմ, Տէրը Զողջ
մարդոց կենդանեաց երկրին մէջ․
և միւս աշխարհին բնակչացը հետ
ըլլալով, ալ մարդու պիտի չնա-
12 յիմ։ Էիմ †շրջանս կը չուէ, ու
հովիւներուն տաղաւարին պէս ինծ-
մէ կը փոխադրուի․ իմ կեանքս
կտրեցի ոստայնանկի պէս․ առէջէն
զիս կը կտրէ․ ցորեկուընէ մինչև

* Կամ՝ կէ-սին

Զ Սաղ․ ԻԷ․ 13․ ՃԺԶ․ 9․

Է Յոբ․ Է․ 6․

† Կամ՝ բնակարանս

Ն. Ք. ԳՓ. 713

13 գիշեր զիս պիտի լմընցընես ։ Մին-
չև առաւօտ սպասեցի. առիւծի
պէս բոլոր ոսկորներս կը կոտրէ.
ցորեկուընէ մինչև գիշեր զիս պիտի
14 լմընցընես ։ Կռունկի պէս կամ ծի-
ծեռնիկի պէս կը ճչէի. աղաւնիի
պէս կը մնչէի. վեր նայելէն աչքերս
տկարացան. ո՛վ Տէր՝ տագնապի
մէջ եմ, ինծի ձեռնտու եղիր ։
15 Ի՞նչ ըսեմ. ինքը ինծի խօսե-
ցաւ, ու ինքը կատարեց. իմ բո-
լոր տարիներուս մէջ՝ իմ հոգւոյս ա-
ցաւին համար կամաց պիտի քա-
16 լեմ ։ Ո՛վ Տէր՝ մարդիկ ասոնցմով
կապրին. ու իմ հոգւոյս կեանքը
ասոնց ամէնէն է. և զիս բժշկե-
17 ցիր, ու ապրեցուցիր ։ Ահա խա-
ղաղութեան տեղ՝ մեծ դառնու-
թիւն էկաւ ինծի. բայց դուն
իմ հոգիս սիրեցիր, որ ապակա-
նութեան գուբէն ազատես. վասն
զի բոլոր մեղքերս կռնակիդ ետևը
18 նետեցիր ։ Քանզի գերեզմանը
քեզ չկրնար օրհնել. մահը քեզի
փառք չկրնար տալ. գուբը իջնող-
ները քու ճշմարտութեանդ չեն
19 կրնար յուսալ ։ Ապրողը՝ ապրողը
քեզ պիտի օրհնէ, ինչպէս որ ես
այսօր կ'ընեմ. Քու ճշմարտու-
թիւնդ՝ հայրը իր որդւոցը պիտի
20 գիտցընէ ։ Տէրը իմ փրկութիւնս
եղաւ. անոր համար մեր կենացը
բոլոր օրերուն մէջ՝ իմ օրհնու-
թիւններս Տէրոջը տանը մէջ լար
ունեցող նուագարաններով պիտի
երգենք ։
21 Վասն զի Եսայի ըսեր էր. Չոր
թուզեր առնեն, մանրեն, ու վէր-
քին վրայ դնեն, և պիտի առող-
22 ջանայ ։ Ու Եզեկիա ըսեր էր.
Տէրոջը տունը ելլելուս նշանը ի՞նչ
ըլլայ ։

## ԳԼ. ԼԹ

1 Մարովդաք Բաղադան՝ եղած հրաշքին համար Եզեկիային պատգամաւորներ խրկելով, անոր հարստութեանը վրայով տեղեկութիւն կը ստանայ ։ 3 Աս լսելով Եսային՝ կը նախաձայնէ Բաբելացւոց գերութիւնը ։

Իրր 712

1 Ան ատենը Բաբելոնի թագաւո-
րը՝ Բաղադանի որդին Մարով-
դաք Բաղադանը նամակներ ու ըն-
ծաներ խրկեց Եզեկիային. քանզի
անոր հիւանդանալը և առողջանա-
2 լը լսեր էր ։ Ու Եզեկիա անոնց
վրայ ուրախացաւ, և իր թանկա-
գին բաներուն տունը, արծաթը,
ու ոսկին, ու խունկերը, և պա-
տուական եղը, ու իր զէնքերուն
բոլոր տունը, և իր գանձերուն մէ-
ջը բոլոր գտնուածը ցուցուց. ու
իր տանը մէջ՝ և իր բոլոր տէրու-
թեանը մէջ բան մը չմնաց, որ Ե-
զեկիա անոնց չցուցընէ ։

Ն. Ք. ԳՓ. 712

3 Ու Եսայի մարգարէն Եզեկիա
թագաւորին եկաւ, ու անոր ը-
սաւ. Աս մարդիկները ի՞նչ ըսին,
և ուսկից եկան քեզի. ու Եզեկիա
ըսաւ. Ինծի հեռու տեղէ՝ Բաբի-
4 լոնէն եկան ։ Ու անիկայ ըսաւ.
Քու տանդ մէջ ի՞նչ տեսան. ու
Եզեկիա ըսաւ. Տանս մէջ ինչ որ
կար՝ տեսան, ու գանձերուս մէջ
անոնց չցուցուցած բանս չմնաց ։
5 Ան ատենը Եսայի՝ Եզեկիային ը-
սաւ. Զօրաց Տէրոջը խօսքը մտիկ
6 ըրէ. Ահա օրեր կու գան՝ որ քու
տանդ մէջ ինչ որ կայ, ու քու
հայրերդ մինչև աս օրս ինչ որ
ժողվեցին, Բաբելոն պիտի տա-
րուի. մէկ բան մը պիտի չմնայ՝
7 կ'ըսէ Տէրը ։ Ու քեզմէ ելլելու՝ քու
ծնանելու որդիներէդ պիտի առ-
նեն, և անոնք Բաբելոնի թա-
գաւորին պալատին մէջը ներքինի-
8 ներ պիտի ըլլան ։ Ու Եզեկիա՝
Եսայիին ըսաւ. Տէրոջը խօսքը՝
որ դուն ըսիր, բարի է. նաև ը-
սաւ. Որովհետև իմ օրերուս մէջ
խաղաղութիւն ու ապահովութիւն
պիտի ըլլայ ։

## ԳԼ. Խ

1 Աւետարանին հրատարակուելուն վրայով, 3 և Յովհաննէս Մկրտչին, 9 ու առաքելոց քարոզութեանը վրայով մարգարէութիւն մը ։ 12 Մարգարէն Աստուծոյ ամենակարողութեամբը 18 ու անզուգականութեամբը 26 ժողովուրդը կը մխիթարէ ։

Իրր 712

1 Մխիթարեցէ՛ք, մխիթարեցէ՛ք
իմ ժողովուրդս, կ'ըսէ ձեր
2 Աստուածը ։ Երուսաղէմին քաղց-
րութեամբ խօսեցէք. ու անոր
կանչեցէ՛ք՝ որ անոր պատերազմելու
ժամանակը լրացաւ, և անոր ան-
օրէնութիւնը թողուեցաւ. քան-
զի իր բոլոր մեղքերուն համար՝ Տէ-
րոջը ձեռքէն կրկին հատուցում ա-
ռաւ ։
3 Անապատի մէջ կանչողին ձայ-
նը. Տէրոջը ճամբան պատրաս-
տեցէ՛ք. ու ամայութեան մէջ
մեր Աստուծոյն համար շաւիղ շիտ-
4 կեցէք ։ Ամէն ձոր պիտի բարձ-
րանայ, և ամէն լեռ ու բլուր պի-
տի ցածնայ, ու ծուռը պիտի
շիտկուի, և խորտուբորտ տեղերը
5 հաւասար պիտի ըլլան ։ Ու Տէ-
րոջը փառքը պիտի յայտնուի, և
ամէն մարմին մէկտեղ զանիկայ պի-
տի տեսնէ. քանզի Տէրոջը բերանը
խօսեցաւ ։
6 Մէկ ձայն մը ըսաւ. Կանչէ՛.
ու անիկայ ըսաւ. Ի՞նչ կանչեմ.
Ամէն մարմին խոտ է, ու անոր
բոլոր վայելչութիւնը դաշտի ծա-
7 ղիկին պէս է ։ Խոտը կը չորնայ,
ծաղիկը կը թառամի, երբոր անոր

վրայ Տէրոջը հովը կը փչէ . իրաւ-
8 ցընէ ժողովուրդը խոտ է ։ Խոտը
կը չորնայ , ծաղիկը կը թառամի .
բայց մեր Աստուծոյն խօսքը յա-
ւիտեան պիտի մնայ ։
9 Ելի՛ր բարձր լեռան վրայ , ո՛վ
դուն՝ որ Սիօնին աւետիս կը բերես .
քու ձայնդ ուժով բարձրացուր ,
ո՛վ դուն՝ որ Երուսաղէմին աւետիս
կը բերես . բարձրացո՛ւր , մի՛ վախ-
նար . Յուդայի քաղաքներուն ը-
10 սէ՛ . Ահա՛ ձեր Աստուածը ։ Ահա՛
Տէր Եհովան զօրութեամբ պիտի
գայ , ու անոր բազուկը իրեն հա-
մար պիտի իշխէ . ահա՛ իր վարձքը
իր հետն է , ու գործոց հատուցումը
11 իր առջևն է ։ Անիկայ հովիւի պէս
իր հօտը պիտի հովուէ . գառնուկ-
ները իր բազուկովը պիտի ժողվէ ,
ու զանոնք իր գրկացը մէջ պիտի
կրէ , և ծիծ տուողները կամաց պի-
տի քշէ ։
12 Ո՞վ իր ափովը ջուրերը չափեց ,
ու թիզով երկինքը ծրագրեց , ու
երկրիս հողը չափի մէջ ամփոփեց ,
և լեռները կշռորդով , ու բլուր-
13 ները կշիռքով կշռեց ։ Ո՞վ քըն-
նեց Տէրոջը Հոգին . ու անոր խոր-
հրդակից ըլլալով , խելամուտ ըրաւ
14 զանիկայ ։ Անիկայ որո՞ւն խոր-
հուրդ հարցուց . ու ո՞վ անոր ի-
մաստութիւն տուաւ , և դատաս-
տանի ճամբան սորվեցուց . ո՞վ ա-
նոր գիտութիւն սորվեցուց , ու
իմաստութեան ճամբան գիտցուց ։
15 Ահա՛ ազգերը դոյլէն կաթող կաթի-
լի պէս են , ու կշիռքի մէջի մանր
փոշիին պէս կը սեպուին . ահա՛
կղզիները *ցրուած փոշիի պէս են" ։
16 Եւ Լիբանանը կրակի համար բա-
ւական չէ . ու անոր անասունները
ողջակէզի համար բաւական չեն ։
17 Ամէն ազգերը անոր առջևը ոչինչի
պէս , ու ոչինչէն պակաս , և ու-
նայնութիւն կը սեպուին ։
18 Ուստի դուք զԱստուած որո՞ւ
կը նմանցընէք , ու զանիկայ ի՞նչ
նմանութեան հետ կը հաւասար-
19 ցընէք ։ Արուեստաւորը կը ձուլէ
կուռքը , ու ոսկերիչը զանիկայ
ոսկիով կը պատէ , և անոր արծա-
20 թէ շղթաներ կը շինէ ։ Ան աղ-
քատը՝ որ չկրնար մեծամեծ նուէր-
ներ ընել , անփուտ փայտ կ՚ընտրէ ,
իրեն վարպետ արուեստաւոր մը կը
փնտռէ , որ անշարժ կուռք մը շի-
21 նէ ։ Միթէ չգիտցա՞ք , չլսեցի՞ք ,
ձեզի առաջուց չզրուցուեցա՞ւ .
երկրիս հիմնադրութենէն չհասկը-
22 ցա՞ք ։ Ինքն է երկրիս շրջանին վրայ
նստողը . ու անոր բնակիչները
մարախներու պէս են . Ինքն է երկ-
կինքը վարագոյրի պէս տարածողը ,
ու նստելու համար՝ զանիկայ վրանի
23 պէս կանգնողը ։ Ինքն է իշխան-
ները բնաջինջ ընողը , ու երկրիս
24 դատաւորները ոչնչացընողը ։ Ա-
նոնք դեռ չտնկուած , չցանուած ,
և անոնց բունը հողի մէջ չարմա-
տացած , անիկայ անոնց վրայ կը
փչէ , ու անոնք կը չորնան . և փո-
թորիկը զանոնք մղեղի պէս կը տա-
25 նի ։ Արդ՝ որո՞ւն կը նմանցընէք
զիս , որ ես անոր հաւասար ըլլամ
26 կ՚ըսէ Սուրբը ։ Աչքերնիդ վե՛ր
վերցուցէ՛ք , ու նայեցէ՛ք . ասոնք
ո՞վ ստեղծեց . անիկայ անոնց զօր-
քը համրանքով կը հանէ . զանոնց
ամէնը իրենց անունովը կը կանչէ .
իր մեծ իշխանութեամբը , ու սաս-
տիկ զօրութեամբը՝ անոնցմէ բնաւ
մէկը ետ չմնար ։
27 Ո՛վ Յակոբ՝ ինչո՞ւ կ՚ըսես , ու
ո՛վ Իսրայէլ՝ ինչո՞ւ կը զրուցես թէ՝
իմ ճամբաս Տէրոջմէ ծածկուեցաւ ,
և իմ իրաւունքս իմ Աստուծմէս
28 զանց եղաւ ։ Միթէ չգիտցա՞ր ,
կամ չլսեցի՞ր որ յաւիտենական Աս-
տուածը Եհովան՝ երկրիս ծայրե-
րուն Ստեղծիչը չյոգնիր , ու չթուլ-
նար . անոր իմաստութիւնը չը-
29 քննուիր ։ Անիկայ է յոգնածին ոյժ
տուողը , ու կարողութիւն չունե-
ցողին շատ զօրութիւն հասցընողը ։
30 Երիտասարդները անգամ պիտի
յոգնին ու թուլնան , և ընտիր
կտրիճները բոլորովին պիտի իյնան ։
31 Բայց Տէրոջը սպասողներուն
ոյժը պիտի նորոգուի . և անոնք
արծիւներու պէս †թևերով վեր
պիտի ելլեն" . պիտի վազեն , ու
չթուլնան , պիտի քալեն , ու չյոգ-
նին ։

## ԳԼ. ԽԱ

1 *Աստուած իր ժողովուրդին հետ կը վիճի՝ յառաջ բերելով իր ողորմութիւնները որ սկզբէն ըրեր է , 10 իր խոստումները , 21 ու կուռքերուն ունայնութիւնը ։*

1 Ո՛վ կղզիներ՝ իմ առջևս լո՛ւռ կե-
ցէք . ու ժողովուրդները իրենց
ոյժը նորոգեն . մօտենան , ու ան
ատենը խօսին . մէկտեղ դատաս-
2 տանի մօտենանք ։ Ո՞վ ոտք հանեց
արդարը արևելքէն , ու զանիկայ
իր շաւիղներուն կանչեց , ազ-
գերը անոր առջևը դրաւ , ու թա-
գաւորներու վրայ անոր տիրել
տուաւ , զանոնք փոշիի պէս դրաւ
անոր սուրին առջևը , ու հողմավար
մղեղի պէս՝ անոր աղեղին առջևը ։
3 Զանոնք հալածեց , ու խաղաղու-
թեամբ անցաւ անանկ ճամբայէ
մը , ուր որ բնաւ իր ոտքը կոխած
4 չէր ։ Ո՞վ է ասիկայ գործողը ու
ընողը , ու շրջանները սկիզբէն

Ն. Ք. Ղ. Ք. իէր 712
Է Սաղ. ճգ. 16 ։
Ը Ա Պետ. ա. 25 ։
Թ Գլ. ծթ. 16 ։
Ժ Գլ. կբ. 11 ։ Յայտ. իբ. 12 ։
Ի Գլ. խթ. 10 ։ Եզեկ. լդ. 23 ։ լէ. 24 ։ Յովհ. ժ. 11 ։ Եբր. ժգ. 20 ։ Ա Պետ. բ. 25 ։ ե. 4 ։ Յայտ. է. 17 ։
Լ Առակ. լ. 4 ։
Խ Յոբ. իա. 22 ։ լզ. 22, 23 ։ Հռով. ժա. 34 ։ Ա Կոր. բ. 16 ։
* Կամ՝ կը վերցընէ փոշիի պէս ։
Ծ Դան. դ. 35 ։
Կ Սաղ. կբ. 9 ։
Հ Հմր 25 ։ Գլ. խզ. 5 ։ Գործ. ժէ. 29 ։
Ձ Գլ. խա. 6, 7 ։ խդ. 12, Ա ։ Երեմ. ժ. 3, Ա ։
Ղ Գլ. խա. 7 ։ Երեմ. ժ. 4 ։
Ճ Սաղ. ժթ. 1 ։ Գործ. ժդ. 16 ։ Հռով. ա. 19. 20 ։
Մ Յոբ թ. 8 ։ Սաղ. ճդ. 2 ։ Գլ. խբ. 5 ։ խդ. 24 ։ ծա. 13 ։ Երեմ. ժ. 12 ։

Ն. Ք. Ղ. Ք. իէր 712
Յ Յոբ. ժբ. 21 ։ Սաղ. ճէ. 40 ։
Ն Հմր 18 ։ Բ Օր. դ. 15 ։ Ա ։
Շ Սաղ. ճխէ. 4 ։
Ո Սաղ. ճխէ. 5 ։ Հռով. ժա. 33 ։
Չ Սաղ. ճգ. 5 ։
† Կամ՝ Նորափետուր պիտի զարգարուին ։
Պ Զաք. բ. 13 ։
Ջ Գլ. խզ. 11 ։
Ռ Տես Ծն. ժդ. 14 ։ Ա ։ Հմր 25 ։ Գլ. խե. 1 ։
Ս Հմր 26 ։ Գլ. խդ. 7 ։ խզ. 10 ։

Ն. Ք. ԳՖ. Իրր 712

կանչողը. ես Տէրս՝ առաջինն
եմ, ու ետքիններուն հետ եմ։
5 Կղզիները տեսան՝ ու վախցան.
երկրիս ծայրերը դողացին. անոնք
6 մօտեցան ու եկան. Անոնց ամէն
մէկը իր ընկերին օգնութիւն ըրաւ,
ու ամէն մէկը իր եղբօրը՝ Զօրացիր
7 ըսաւ։ Նաեւ արուեստաւորը՝ ոս-
կերիչին, ուռով ծեծողը՝ սալի
վրայ զարնողին սիրտ կու տայ, ու
կ'ըսէ. Ասիկայ կպցնելու համար
աղէկ է, ու զանիկայ գամերով կը
գամէ, որ չշարժի։
8 Բայց դուն ով իմ ծառաս Իս-
րայէլ, իմ ընտրեալս Յակոբ՝
իմ սիրելոյս Աբրահամին սե-
9 րունդը՝ Որ քեզ երկրիս ծայրերէն
առի, ու քեզ անոր եզերքներէն
կանչեցի, և քեզի ըսի. Դուն իմ
ծառաս ես, քեզ ընտրեցի, ու
10 քեզ չմերժեցի. Մի՛ վախնար,
քանզի ես քեզի հետ եմ. մի՛ զար-
հուրիր, վասն զի ես քու Աս-
տուածդ եմ. քեզ պիտի զօրացը-
նեմ և քեզի օգնութիւն պիտի ը-
նեմ, ու իմ արդարութեանս ա-
11 ջովը քեզ պիտի բռնեմ։ Ահա
քեզի դէմ ամէն բարկացողները
պիտի ամչնան, ու պիտի պատ-
կառին. ու քեզի հետ վիճող մար-
դիկները չեղածի պէս պիտի ըլլան՝
12 ու պիտի կորսուին։ Քեզի հետ
կռուող մարդիկները պիտի փնտր-
ռես, ու պիտի չգտնես. քեզի հետ
պատերազմ ընող մարդիկները չե-
ղածի պէս, ու ոչինչի պէս պիտի
13 ըլլան։ Քանզի ես քու Տէր Աս-
տուածդ եմ, որ քու աջ ձեռքդ
կը բռնեմ, ու քեզի կ'ըսեմ.
Մի՛ վախնար, ես քեզի օգնու-
14 թիւն կ'ընեմ։ Ո՛վ Յակոբին
որդը՝ մի՛ վախնար, ով Իսրայէլին
մահկանացուները, քեզի պիտի
օգնեմ, կ'ըսէ Տէրը ու Իսրայէլին
15 Սուրբը՝ քու Փրկիչդ։ Ահա ես
քեզ նոր՝ սուր ու ատամնաւոր
կամնասայլի պէս պիտի ընեմ.
լեռները պիտի մանրես ու փշրես,
և բլուրները մղեղի պիտի դարձը-
16 նես. Զանոնք պիտի հօսես, ու
հովը զանոնք պիտի տանի. և փո-
թորիկը զանոնք պիտի ցրուէ. ու
դուն Տէրոջմով պիտի ցնծաս,
Իսրայէլին Սուրբովը պիտի պար-
ծենաս։
17 Աղքատները ու տնանկները ջուր
կը փնտռեն. բայց չկայ. անոնց
լեզուն ծարաւէն չորցեր է. ես
Տէրս անոնց խնդրուածքը պիտի
լսեմ. ես Իսրայէլին Աստուածը
զանոնք երբեք պիտի չձգեմ։
18 Բարձր տեղերու վրայ գետեր, ու
հովիտներու մէջ աղբիւրներ պիտի

Գլ. խդ. 6։ խը. 12։ Յայտ. ա. 17։ իբ. 13։
Գլ. խ. 19։ խդ. 12։
Գլ. խ. 19։
Գլ. խ. 20։
Բ Օր. է. 6։ Ժ. 15։ Ժդ. 2։ Սաղ. ճլե. 4։ Գլ. խգ. 1։ խդ. 1։
Բ Մն. ի. 7։ Յակ. բ. 23։
Հմր 13, 14։ Գլ. խգ. 5։
Բ Օր. լա. 6, 8։
Ել. իգ. 22։ Գլ. խե. 24։ Զաք. ժբ. 3։
Հմր 10։
Միք. դ. 13։ Բ Կոր. ժ. 4, 5։
Երեմ. ծա. 2։
Գլ. խե. 25։
Գլ. լե. 6, 7։ խդ. 19։ խդ. 3։

բանամ. անապատը ջուրի լիճի,
ու չոր երկիրը ջուրի աղբիւրներու
19 պիտի դարձընեմ։ Անապատին
մէջ՝ եղեւին, սատիմ, մրտենի ու
նոճի պիտի տնկեմ. անջուր երկ-
րին մէջ՝ մայր, սօսի ու տօսախ
20 մէկտեղ պիտի դնեմ. Որպէս զի
տեսնեն ու գիտնան, ու մէկտեղ
մտածեն ու հասկընան, որ ասի-
կայ Տէրոջը ձեռքը ըրաւ, ու Իս-
րայէլին Սուրբը ստեղծեց։
21 Ձեր դատը յառաջ բերէք, կ'ըսէ
Տէրը. ձեր զօրաւոր փաստերը մօ-
տեցուցէ՛ք, կ'ըսէ Յակոբին Թա-
22 գաւորը։ Թող մօտեցընեն, ու
ինչ ըլլալիքը մեզի պատմեն. ա-
ռաջինները մեզի յայտնեն թէ անոնք
ինչ էին, որպէս զի միտքերնիս
պահենք, ու անոնց վախճանը
գիտնանք. կամ ապագայ բաները
23 մեզի գիտցընեն։ Ասկէ ետքը ըլ-
լալիքները պատմեցէ՛ք, որ ձեր աս-
տուած ըլլալը գիտնանք. կամ
աղէկ կամ գէշ բան մը ըրէ՛ք, որ
զարմանանք, ու մէկտեղ տեսնենք։
24 Ահա դուք ոչինչ էք, ու ձեր
գործքն ալ ոչինչ է. ձեզ ընտրողը
25 պղծութիւն է։ Հիւսիսի կողմէն
մէկը արթընցուցի, և պիտի գայ,
արեւելքէն իմ անունս պիտի
կանչէ. և իշխանները տիղմի պէս
պիտի կոխէ, ինչպէս որ բրուտը
26 կաւը կը կոխէ։ Ո՞վ պատմեց
սկիզբէն՝ որ գիտնանք. ու առջի
դարերէն՝ որ ճշմարիտ է՝ ըսենք.
ոչ յայտնող մը կայ, ոչ գիտցընող
մը, և ոչ ձեր խօսքերը մտիկ ընող
27 մը։ Առաջ ես եմ Սիօնին. Ա-
հա՛ ահա՛ անոնք. ու Երուսաղէմին
28 աւետիս բերող տուի։ Նաեւ նայե-
ցայ, ու մարդ մը չկար, և ասոնց
մէ ընաւ մէկ խորհրդական մը չկար,
որ հարցընեմ, ու պատասխան
29 տայ։ Ահա ամէնքը սնոտի են,
գործքերնին ոչինչ է. անոնց ձու-
լածոյ կուռքերը՝ հով ու ունայ-
նութիւն են։

Ն. Ք. ԳՖ. Իրր 712
Սաղ. ճէ. 35։
Յոբ. ժբ. 9։
Գլ. խե. 21։
Գլ. խը. 9։ խդ. 7, 8։ խե. 3։ Յովհ. ժգ. 19։
Երեմ. ժ. 5։
Սաղ. ճժե. 8։ Գլ. խդ. 9։ Ա Կոր. ը. 4։
Եզր. ա. 2։
Հմր 2։
Գլ. խդ. 9։
Հմր 4։
Գլ. խ. 9։
Գլ. կգ. 5։
Հմր 24։

## ԳԼ. ԽԲ

1 Քրիստոսի պաշտօնը, հեզութիւնը և հաստատութիւնը։ 5 Աստուծոյ անոր ըրած խոստումները։ 10 Աստուած գովելու յորդորանք մը՝ իր աւետարանին համար։ 17 Ժողովուրդը կը յանդիմանուի իր անհաւատութեանը համար։

1 Ահա իմ ծառաս՝ որուն ձեռնտու
պիտի ըլլամ, ու իմ ընտրածս՝
որուն իմ սիրտս հաճեցաւ. իմ
Հոգիս անոր վրայ դրի. անիկայ
ազգերուն իրաւունք պիտի հանէ։
2 Անիկայ պիտի չպոռայ, ու պիտի
չաղաղակէ, և իր ձայնը դուրսը
3 լսել պիտի չտայ։ Ջախջախուած ե-
ղէգը պիտի չփշրէ, ու պլպլած

Գլ. խգ. 10։ խթ. 3, 6։ Ծբ. 13։ Ծգ. 11։ Մատ. ժբ. 18, 19, 20։ Փիլ. բ. 7։
Մատ. գ. 17։ ժէ. 5։ Եփե. ա. 6։
Գլ. ժա. 2։ Յովհ. գ. 34։

պատրոյգը պիտի չմարէ . իրաւուն-
քը ճշմարտութեան պիտի հանէ ։
4 Անիկայ պիտի չտկարանայ , ու պի-
տի չթուլնայ . մինչև որ իրաւունքը
երկրի վրայ հաստատէ . և կղզի-
ները անոր օրէնքին պիտի սպասեն ։
5 Երկինքը ստեղծող , ու զանիկայ
կազմող , Երկիրը ու անոր մէջ
բուսածը տարածող , անոր վրայ
եղող ժողովրդեան շունչ և անոր
մէջը քալողներուն ոգի տուող Տէր
6 Աստուածը այսպէս կ՚ըսէ . Ես
Տէրս քեզ արդարութեամբ կանչե-
ցի . և ձեռքէդ պիտի բռնեմ , ու
քեզ պիտի պահպանեմ , և քեզ
ժողովուրդին ուխտ , ազգերուն
7 լոյս պիտի տամ . Որ կոյրերուն
աչքերը բանաս . բանտարկեալնե-
րը բանտէն հանես , խաւարի
մէջ նստողները կապանքի տունէն ։
8 Ես Եհովայ եմ . իմ անունս աս է .
ու իմ փառքս ուրիշի մը չեմ
տար . ոչ ալ իմ պատիւս կուռ-
9 քերուն ։ Առջի բաները ահա ե-
ղան , ու նորերը ես կը յայտնեմ .
անոնք դեռ չեղած ձեզի կ՚իմացը-
նեմ ։
10 Նոր երգ երգեցէք Տէրոջը .
անոր գովութիւնը երկրիս ծայրե-
րէն , ո՛վ ծովը իջնողներ , ու զա-
նիկայ լեցնողներ , կղզիներ , և ա-
11 նոնց բնակիչները ։ Անապատը ու
անոր քաղաքները՝ Կեդարու բնա-
կած գեղերը ձայն վերցընեն . *Վէմի
բնակիչները յաղթանակի երգով՝
12 լեռներուն գլխէն ձայն տան . Տէ-
րոջը փառք տան , և անոր գովու-
թիւնը կղզիներուն մէջ պատմեն ։
13 Տէրը հզօրի պէս պիտի ելլէ , պա-
տերազմող մարդու պէս իր նախան-
ձը պիտի արթնցընէ պիտի ա-
ղաղակէ ու բարձրաձայն պիտի
գոչէ , և իր թշնամիներուն վրայ
†յաղթող պիտի ըլլայ" ։
14 Ես շատոնցմէ լուռ կեցայ , ձայնս
կտրեցի , ու զիս զսպեցի . հիմա
ծննդող կնկան պէս պիտի պոռամ .
‡պիտի աւրեմ , ու մէկէն պիտի
15 կլլեմ" . Լեռները ու բլուրները ա-
նապատ պիտի ընեմ , և անոնց բո-
լոր խոտը պիտի չորցընեմ , ու գե-
տերը ‖ցամաքի պիտի դարձընեմ ,
և լիճերը պիտի ցամքեցընեմ ։
16 Ու կոյրերը իրենց չգիտցած ճամ-
բուն մէջ պիտի պտըտցընեմ . զա-
նոնք՝ իրենց չգիտցած շաւիղներուն
մէջ պիտի քալեցընեմ . անոնց առ-
ջևը խաւարը՝ լոյս , ու խորտուբորտ
տեղերը հաւասար պիտի ընեմ .
անոնց աս բաները պիտի ընեմ ,
ու զանոնք երեսէ պիտի չձգեմ ։
17 Քանդակած կուռքերու ապաւի-
նողները , և ձուլածոյ կուռքերուն՝
Դուք մեր աստուածներն էք՝ ըսող-
ները՝ ետ պիտի դառնան , ու ա-
մօթալից ըլլան ։
18 Ո՛վ խուլեր՝ լսեցէք , ու ո՛վ
19 կոյրեր՝ նայեցէք որ տեսնէք ։ Ո՞վ
է կոյր՝ բաց ՚ի իմ ծառայէս , կամ
խուլ՝ իմ խրկած դեսպանիս պէս .
ո՞վ է կոյր՝ Աստուծոյ նուիրեալին
պէս . և կոյր՝ Տէրոջը ծառային
20 պէս ։ Շատ բաներ կը տեսնես .
բայց զգուշութիւն չես ըներ . ա-
կանջներդ բաց են , բայց չես լսեր ։
21 Տէրը իր արդարութեանը համար
անոր հաճեցաւ . իր օրէնքը մեծ-
22 ցուց ու փառաւորեց ։ Բայց անի-
կայ յափշտակուած և կողոպտուած
ժողովուրդ է . ամէնքը քարայրնե-
րու մէջ որոգայթի բռնուեցան , ու
բանտերու մէջ պահուեցան . ա-
նոնք յափշտակութեան մատնուե-
ցան , և ազատող մը չկայ . կողո-
պուտ եղան , ու մէկը չըսեր որ
23 Ետ տուր՝ ըսէ ։ Ձեր մէջը ո՛վ կայ ,
որ ասոր ականջ դնէ . մտիկ ընէ
ու լսէ գալու ժամանակին համար ։
24 Ո՞վ մատնեց Յակոբը յափշտա-
կութեան , ու Իսրայէլը կողոպ-
տիչներուն . չէ՞ որ Տէրը՝ որուն
դէմ մեղք գործեցինք . վասն զի
անոր ճամբաներուն մէջը քալել
չուզեցին , և անոր օրէնքին հնա-
25 զանդութիւն չըրին ։ Ուստի իր
սաստիկ բարկութիւնը ու պատե-
րազմի ուժգնութիւնը անոր վրայ
թափեց , և ամէն կողմէն զանիկայ
բռընկցուց . բայց անիկայ չգիտ-
ցաւ . զանիկայ այրեց , բայց անի-
կայ իր սրտին մէջը չդրաւ ։

## ԳԼ. ԽԳ

1 Տէրը իր խոստմունքներովը եկեղեցին կը մխիթարէ . 8 ժողովուրդը կը կանչէ որ իր ամենակարողութեանը վկայութիւն տան . 14 կը նախաձայնէ անոնց՝ Բաբելոնի կործանումը . 18 և իր ժողովուրդին հրաշալի կերպով փրկուիլը . 22 ժողովուրդը կը յանդիմանէ՝ ցուցընելով թէ կարող չեն ինքզինքնին արդարացընելու ։

1 Ու հիմա ո՛վ Յակոբ՝ քեզ ստեղ-
ծողը , ու ո՛վ Իսրայէլ՝ քեզ
ձևակերպող Տէրը այսպէս կ՚ըսէ .
Մի վախնար , վասն զի ես քեզ
փրկեցի . քեզ քու անունովդ կան-
2 չեցի . դուն իմս ես ։ Երբոր ջու-
րերէն անցնիս , ես քեզի հետ պիտի
ըլլամ , ու երբոր գետերէն անցնիս ,
քեզ պիտի չխեղդեն . Երբոր կրակի
մէջէն քալես , պիտի չայրիս , և
բոցը քեզ պիտի չբռընկցընէ ։
3 Քանզի ես քու Տէր Աստուածդ՝
Իսրայէլին Սուրբը՝ քու Փրկիչդ
եմ . Եգիպտոսը քեզի համար
փրկանք՝ Եթէովպիան ու Սաբան
4 քեզի համար փոխարէն տուի ։ Ո-
րովհետև իմ առջևս պատուական

Ն. Ք. ՎՓ. Իրր 712
ՓԾն. ԽԹ. 10
ԵԳլ. ԽԴ. 24. Զաք. ԺԲ. 1
ԶՍաղ. ՃԼԶ. 6
ԷԳոր. ԺԷ. 25
ԸԳլ. ԽԴ. 1
ԹԳլ. ԽԹ. 8
ԺԳլ. ԽԹ. 6. Ղուկ. Բ. 32. Գոր. ԺԳ. 47
ԻԳլ. ԼԵ. 5
ԼԳլ. ԿԱ. 1. Ղուկ. Դ. 18. 19. Բ Տիմ. Բ. 26. Եբր. Բ. 14. 15
ԽԳլ. Թ. 2
ԾԳլ. ԽԸ. 11
ԿՍաղ. ԼԳ. 3. Խ. 3. ՂԸ. 1
ՀՍաղ. ՃԷ. 23
* Կամ՝ Վէմերու
ՅԳլ. ԼԱ. 4
† Կամ՝ պիտի զօրանայ
‡ Կամ՝ շունչ առնելով պիտի փչեմ
‖ Կամ՝ կղզիներու

Ն. Ք. ՎՓ. Իրր 712
ՂՍաղ. ՂԷ. 7. Գլ. Ա. 29. ԽԴ. 11. ԽԵ. 16
ՃԳլ. ԽԴ. Տ. Եզեկ. ԺԲ. 2. Տծս Յով. Թ. 39 41
ՍՅեր. Հռով. Բ. 21
ՎՏես Գ Թագ. ԻԵ. 9
ՏՈվս. Է. 9
Ա Հմր 7
Բ Հմր 21. Գլ. ԽԴ. 2. 21. 24
Գ Գլ. ԽԴ. 6
Դ Գլ. ԽԲ. 6. ԽԵ. 4
Ե Սաղ. ԿԶ. 12. ՂԱ. 3. ԺԵ.
Զ Օր. ԼԱ. 6. 8
Է Դան. Գ. 25. 27
Ը Առակ. ԺԱ. 8. ԻԱ. 18

Ն․ Ք․ ՂՓ․ ԻԲԲ 712

եղար , պատիւ դտար , ու ես քեզ
սիրեցի ․ անոր համար քու [ա] տեղդ
փոխարէն՝ մարդ , ու քու հոգւոյդ
փոխարէն՝ ժողովուրդներ պիտի
5 տամ ։ [բ] Մի՛ վախնար , քանզի ես
քեզի հետ եմ ․ քու սերունդդ ա-
րեւելքէն պիտի բերեմ , և քեզ ա-
6 րեւմուտքէն պիտի ժողվեմ ։ Հիւ-
սիսին պիտի ըսեմ թէ՝ Տո՛ւր , ու
հարաւին թէ՝ Մի՛ արգիլեր ․ իմ
տղաքներս հեռուէն ու աղջիկներս
7 երկրի ծայրէն բե՛ր , Այսինքն բոլոր
[ժ] իմ անունովս կոչուածները ․ վասն
զի [ի] անոնք իմ փառացս համար
ստեղծեցի ․ [լ] զանոնք ձեւակերպեցի
ու կազմեցի ։
8 [խ] Աչք ունեցող կոյր ժողովուրդը ,
ու ականջ ունեցող խուլերը հանե-
9 ցէք ։ Բոլոր ազգերը միկտեղ
ժողվուին , և ժողովուրդները հա-
ւաքուին ․ [ծ] անոնցմէ ո՞վ կրնայ
ասիկայ պատմել , ու առջի բաները
մեզի գիտցրնել ․ իրենց վկաները
թող բերեն , որ արդարանան , և
[կ] թող լսեն , ու ըսեն թէ՝ Ասիկայ
10 ճշմարիտ է ։ [հ] Իմ վկաներս դուք
էք՝ կ'ըսէ Տէրը , [ձ] նաև իմ ընտրած
ծառաս ․ որպէս զի գիտնաք , ու
ինծի հաւատաք , և հասկընաք , որ
ես եմ ․ [ղ] ինծմէ առաջ Աստուած
* չեղաւ , ու ինծմէ ետքն ալ պիտի
11 չըլլայ ։ [ղ] Տէրը ես եմ՝ ես եմ , և
12 ինծմէ ուրիշ փրկիչ չկայ ։ Ես
զրուցեցի , ու փրկեցի , և գիտցու-
ցի , երբոր ձեր մէջը [ճ] օտար աս-
տուած չկար ․ [մ] ու իմ վկաներս
դուք էք , կ'ըսէ Տէրը , որ ես եմ
13 Աստուած ։ [յ] † Սկիզբէն ՚ի վեր ես
նոյն եմ , ու չկայ մէկը որ իմ ձեռ-
քէս ազատէ ․ երբոր ես բան մը
կ'ընեմ , ո՞վ կրնայ զանիկայ [ն] ար-
գիլել ։
14 Այսպէս կ'ըսէ Տէրը՝ ձեր Փրկիչը՝
Իսրայէլին Սուրբը ․ Ձեր սիրոյն հա-
մար Բաբելոն կը խրկեմ , ‡ և անոնց
ամէն փախստականները , ու նաւե-
րու մէջ աղաղակող Քաղդէացի-
15 ները կ'իջեցնեմ ։ Ես եմ Եհովայ՝
ձեր Սուրբը , Իսրայէլին Ստեղծիչը՝
16 ձեր Թագաւորը ։ Այսպէս կ'ըսէ
Տէրը՝ որ [շ] ծովու մէջ ճամբայ , ու
[ո] զօրաւոր ջուրերու մէջ շաւիղ կը
17 դնէ , Որ [չ] կառքը ու ձին , զօրքը և
զօրութիւնը կը հանէ ․ անոնք մէկ-
տեղ կը պառկին , ու չեն ելլեր ․
անոնք պատրոյգի պէս կը մարին և
18 կ'անցնին ․ [պ] Առջինները մի՛ յիշէք ,
ու հին բաները միտքերնիդ մի՛ բե-
19 րէք ։ [ջ] Ահա ես Նոր բան պիտի
ընեմ , որ հիմա պիտի յայտնուի ․
միթէ զանիկայ պիտի չգիտնա՞ք ․
[ռ] ես անապատի մէջ ալ ճամբայ՝
[ս] անջրդի երկրի մէջ գետեր պիտի

[ա] Գլ․ խա․ 10, 14 ։ խդ․ 2 ։ Երեմ․ լ․ 10, 11 ։ խզ․ 27, 28 ։
[ժ] Գլ․ կգ․ 19 ։ Յակ․ բ․ 7 ։
[ի] Սաղ․ ճ․ 3 ։ Գլ․ ԻԹ․ 23 ։ բ Կոր․ ե․ 17 ։ Եփե․ բ․ 10 ։
[լ] Հմր 1 ։
[խ] Գլ․ զ․ 9 ։ խբ․ 19 ։ Եզեկ․ ժբ․ 2 ։
[ծ] Գլ․ խա․ 21, 22, 26 ։
[կ] Գլ․ խդ․ 8 ։
[հ] Գլ․ խբ․ 1 ։ ծե․ 4 ։
[ձ] Գլ․ խա․ 4 ։ խդ․ 6 ։
* Եբր․ չաստուածութեան ,
[ղ] Գլ․ խե․ 21 ։ Ովս․ ժգ․ 4 ։
[ճ] բ Օր․ լբ․ 16 ։ Սաղ․ ձա․ 9 ։
[մ] Գլ․ խդ․ 8 ։ Հմր 10 ։
[յ] Սաղ․ գ․ 2 ։ Յովհ․ ը․ 58 ։
† Եբր․ Օրէն
[ն] Յոբ․ Թ․ 12 ։ Գլ․ ժդ․ 27 ։
‡ Կամ՝ Եւ անոնց ամէնը փախստական կ'իջեցնեմ․ ու Քաղդէացւոց աղաղակը նաւերուն մէջ պիտի ըլլայ ։
[շ] Ել․ ժդ․ 16, 22 ։ Սաղ․ հէ․ 19 ։ Գլ․ ծա․ 10 ։
[ո] Յես․ գ․ 13, 16 ։
[չ] Ել․ ժդ․ 4-9, 25 ։
[պ] Երեմ․ ժզ․ 14 ։ իգ․ 7 ։
[ջ] բ Կոր․ ե․ 17 ։ Յայտ․ իա․ 5 ։
[ռ] Ել․ ժէ․ 6 ։ Թուոց․ ի․ 11 ։ բ Օր․ ը․ 15 ։ Սաղ․ հը․ 16 ։ Գլ․ լե․ 6 ։ խա․ 18 ։

20 դնեմ ։ Ձիս դաշտի գազանները ,
ճագարները ու ջայլամները պիտի
փառաւորեն ․ վասն զի իմ ժողո-
վուրդիս՝ իմ ընտրեալներուս խմց-
նելու համար՝ [ս] անապատի մէջ
ջուրեր , և անջրդի երկրի մէջ գե-
21 տեր պիտի տամ ։ [վ] Աս ժողովուր-
դը ես ինծի համար ստեղծեցի ․ ա-
նոնք իմ գովութիւնս պիտի պատ-
մեն ։
22 Բայց դուն ինծի չկանչեցիր՝ ո՛վ
Յակոբ ․ հապա [տ] ինծմէ ձանձրա-
23 ցար՝ ո՛վ Իսրայէլ ։ [ր] Քու ողջա-
կէզներուդ ոչխարները ինծի չբե-
րիր , և քու զոհերովդ զիս չփառա-
ւորեցիր ․ ընծայի համար քեզ չաշ-
խատցուցի , ու կնդրուկի համար
24 քեզ չյոգնեցուցի ։ Ինծի համար
ստակով խունկեղէգն ծախու չա-
ռիր , և քու զոհերուդ ճարպովը
զիս չկշտացուցիր ․ հապա քու
մեղքերովդ զիս աշխատցուցիր ․ [ւ]
քու անօրէնութիւններովդ զիս
25 [ց] յոգնեցուցիր ։ Ես եմ՝ ես եմ ,
որ [ւ] քու յանցանքներդ † ինծի հա-
մար կը ջնջեմ , [փ] ու քու մեղքերդ
26 ալ պիտի չյիշեմ ։ Միտքս ձգէ ․
մէկտեղ դատի ելլենք , դուն զրու-
27 ցէ , որպէս զի արդարանաս ։ Քու
նախահայրդ մեղք գործեց , և քու
ուսուցիչներդ ինծմէ ապստամբե-
28 ցան ։ Ուստի [ք] ես ալ սրբարանին
իշխանները պիղծ սեպեցի , [§] և
Յակոբը նզովքի , ու Իսրայէլը նա-
խատինքի մատնեցի ։

## ԳԼ․ ԽԴ․

1 Աստուած իր խոստմունքներովը կը մխիթարէ Եկեղեցին ․ 7 կը ցուցընէ կուռքերուն ունայնութիւնը , 9 և կուռք շինողներուն յիմարութիւնը ։ 21 Աստուած գովելու յորդորանք մը՝ իր փրկագործութեանը ու ամենակարողութեանը համար ։

1 Ու հիմա մտի՛կ ըրէ՝ [ա] ո՛վ իմ ծա-
ռաս Յակոբ , ու դուն ով իմ
2 ընտրած Իսրայէլս ։ Քեզ ստեղ-
ծող , և [բ] արգանդի մէջ ձեւակեր-
պող , ու քեզի օգնութիւն ընող
Տէրը այսպէս կ'ըսէ ․ Ո՛վ իմ ծա-
ռաս Յակոբ , և դուն ո՛վ իմ ընտ-
րած [գ] ‖ Իսրայէլս՝ մի՛ վախնար ․
3 Քանզի [դ] ծարաւին վրայ ջուր պի-
տի թափեմ , ու անջուր երկրին
վրայ՝ հեղեղներ ․ քու սերունդիդ
վրայ իմ Հոգիս պիտի թափեմ , և
քու որդւոցդ վրայ՝ իմ օրհնու-
4 թիւնս ։ Ու անոնք [ե] իբր խոտե-
րու մէջ , ջուրի վտակներու քով
եղող ուռիներու պէս պիտի բուս-
5 նին ։ Մէկը պիտի ըսէ թէ՝ Ես
Տէրոջն եմ ․ մէկն ալ Յակոբին
անունովը պիտի կանչուի ․ և միւսն
ալ իր ձեռքովը պիտի գրէ [զ] Ես

Ն․ Ք․ ՂՓ․ ԻԲԲ 712

[ս] Գլ․ խը․ 21 ։
[վ] Սաղ․ ճբ․ 18 ։ Հմր 1, 7 ։ Ղուկ․ ա․ 74, 75 ։ Եփե․ ա․ 5, 6 ։
[տ] Մաղ․ ա․ 13 ։
[ր] Ամով․ ե․ 25 ։
[ց] Գլ․ ա․ 14 ։ Մաղ․ բ․ 17 ։
[ւ] Գլ․ խդ․ 22 ։ խը․ 9 ։ Երեմ․ ծ․ 20 ։ Գոր․ գ․ 19 ։
† Եզեկ․ լզ․ 22, 32 ։
[փ] Գլ․ ա․ 18 ։ Երեմ․ լա․ 34 ։
[ք] Գլ․ խէ․ 6 ։ Ողբ․ բ․ 2, 6, 7 ։
[§] Սաղ․ հթ․ 4 ։ Երեմ․ իդ․ 9 ։ Դան․ Թ․ 11 ։ Զաք․ ը․ 13 ։

[ա] Հմր 21 ։ Գլ․ խա․ 8 ։ խգ․ 1 ։ Երեմ․ լ․ 10 ։ խզ․ 27, 28 ։
[բ] Գլ․ խգ․ 1, 7 ։
[գ] բ Օր․ լբ․ 15 ։
‖ Եբր․ Յեսուրունս՝
[դ] Գլ․ լե․ 7 ։ Յովել․ բ․ 28 ։ Յովհ․ է․ 38 ։ Գործ․ բ․ 18 ։

Տէրոջնէ, ու Իսրայէլին անունո-
վը պիտի մականուանի ։
6 Տէրը՝ Իսրայէլին Թագաւորը՝ և
զօրաց Տէրը՝ անոր Փրկիչը այսպէս
կ'ըսէ. Ես եմ առաջինը, ու ես
եմ վերջինը, ու ինծմէ ուրիշ
7 Աստուած չկայ ։ Ու հին ժողո-
վուրդը հաստատելէս 'ի վեր՝ ո՞վ
կրցաւ ինծի պէս ձայն տալ ու
պատմել, և ասիկայ ինծի համար
կարգի դնել. Թող զրուցեն գա-
8 լու ու ըլլալու բաները ։ Մի՛ վախ-
նաք, ու մի՛ զարհուրիք. ըմիթէ
ես ձեզի ան ատենէն չլսեցուցի՞,
ու չզրուցեցի՞ ։ Դուք իմ վկաներս
դուք էք ։ Ինծմէ ուրիշ Աս-
տուած կա՞յ, Յիրաւի ուրիշ
Վէմ չկայ. ուրիշ մը չեմ գիտեր ։
9 Կուռք շինողներուն ամէնն ալ ու-
նայնութիւն են. և անոնց ընտիր
գործերը օգուտ մը չեն ըներ. ու
իրենք իրենց դէմ վկաներ են.
չեն տեսներ ու չեն իմանար, որ
10 ամչնան ։ Ո՞վ է անիկայ,
որ աստուած կը շինէ, և կուռք կը
11 ձուլէ, որ օգուտ մը չըներ ։ Ահա
անոր բոլոր ընկերները պիտի ա-
մըչնան. վասն զի արուեստաւորնե-
րը անգամ մարդ են. Թող անոնք
ամէնը ժողվուին ու կայնին. պիտի
վախնան, ու մէկտեղ պիտի ամըչ-
12 նան ։ Երկաթագործը ածուխով
կը շինէ տապարը, և կռաններով
անոր ձև կու տայ, ու զանիկայ իր
զօրաւոր բազուկովը կը շինէ. երբ-
որ անօթենայ, ուժէ կը կտրի.
13 երբոր ջուր չխմէ, կը մարի ։ Հիւ-
սը լար կը քաշէ, և մատիտով
նշանը կը գծագրէ. զանիկայ
քանդակագործի գրիչով կը բանի,
ու անոր վրայ կարկինով կը գծէ.
զանիկայ մարդու կերպարանքով,
և մարդկային գեղեցկութիւնով կը
14 շինէ, որ տան մէջ դրուի ։ Անի-
կայ իրեն եղևիններ կը կտրէ, և
գիհի ու կաղնի կ'առնէ, որոնք
իրեն՝ անտառի ծառերէն կ'ընտրէ.
Թեղօշ կը տնկէ, և զանիկայ անձ-
15 րևը կը մեծցնէ ։ Ու անոնք մար-
դուն վառելիք կ'ըլլան. և անոնցմէ
կ'առնէ, որ կրակ վառէ, ու տաք-
նայ. անոնց մէջ կրակը կ'այրէ, ու
հաց կ'եփէ. Նաև աստուած մը կը
շինէ, և անոր երկրպագութիւն
կ'ընէ. զանիկայ կուռք կը ձևացընէ
16 ու կը պաշտէ ։ Անոր կէսովը կրակ
կը վառէ. կէսովը միս կ'ուտէ.
խորոված կ'եփէ, ու կը կշտանայ.
և կը տաքնայ, ու կ'ըսէ. Ահա
17 տաքցայ, կրակը տեսայ ։ Ու ա-
նոր մնացածը աստուած՝ այսինքն
կուռք կը շինէ իրեն, զանիկայ կը
պաշտէ, ու անոր երկրպագութիւն
կ'ընէ, և անոր աղօթք կ'ընէ, ու
կ'ըսէ. Զիս ազատէ, քանզի իմ
18 աստուածս դուն ես ։ Չեն գիտեր
ու չեն հասկընար. քանզի անոնց
աչքերը՝ տեսնելէն, և անոնց սիր-
տերը՝ հասկընալէն ծեփուեցաւ ։
19 Ու մէկը միտքը չբերեր, և գիտու-
թիւն ու հանճար չունի՝ որ ըսէ.
Անոր կէսովը կրակ վառեցի, և ա-
նոր կայծերուն վրայ հաց ալ եփե-
ցի. միս խորովեցի ու կերայ, և
մնացածը պղծութի՞ւն շինեմ.
20 ծառի կոճղ պաշտեմ ։ Անիկայ
մոխիրով կը սնանի. անոր խա-
բուած սիրտը զինքը կը մոլորցնէ.
և իր հոգին չկրնար փրկել, ու չը-
սեր Թէ՝ Իմ աջ ձեռքիս մէջը
21 ստութիւն չկա՞յ ։ Ասոնք մի՛տքդ
բեր՝ ո՛վ Յակոբ, և դուն ո՛վ Իսրա-
յէլ, քանզի իմ ծառաս ես. ես
ստեղծեցի քեզ. դուն իմ ծառաս
ես. ո՛վ Իսրայէլ՝ *զիս մի՛ մոռ-
22 նար" ։ Քու յանցանքներդ մէգի
պէս, ու քու մեղքերդ ամպի պէս
ջնջեցի. ինծի դարձիր, քանզի
քեզ փրկեցի ։
23 Ուրախ եղէք՝ ո՛վ երկինք, քան-
զի Տէրը ըրաւ զանիկայ. ո՛վ երկրիս
վարի կողմերը՝ ցնծութեամբ աղա-
ղակեցէք. լեռներ, անտառ՝ ու
անոր մէջը եղող բոլոր ծառեր՝ ու-
րախութեան ձայներ հանեցէք.
քանզի Տէրը փրկեց Յակոբը, և
Իսրայէլի մէջ փառաւորուեցաւ ։
24 Այսպէս կ'ըսէ Տէրը քու Փրը-
կիչդ, ու քեզ արգանդի մէջ
Ստեղծողը. Ես եմ Տէրը, որ ա-
մէն բաները ըրի. երկինքը մինակ
ես տարածեցի, ու երկիրը իմ կա-
25 րողութեամբս հաստատեցի. Սը-
տախօսներուն նշանները պարապը
կը հանեմ, և գուշակողները կը
յիմարեցընեմ. իմաստունները ետ
կը դարձընեմ, ու անոնց գիտու-
թիւնը յիմարութեան կը հանեմ.
26 Իմ ծառայիս խօսքը կը հաստա-
տեմ, և իմ դեսպաններուս խոր-
հուրդը կը կատարեմ ։ Ես եմ՝ որ
Երուսաղէմին համար կ'ըսեմ Թէ՝
Պիտի բնակուի, ու Յուդայի քա-
ղաքներուն համար Թէ Պիտի շի-
նուին. ու անոր աւերակները պի-
27 տի կանգնեմ ։ Ես անդունդին
կ'ըսեմ Թէ՝ Չորցի՛ր, ու քու գե-
28 տերդ պիտի ցամքեցընեմ ։ Ես
Կիւրոսին համար կ'ըսեմ. Իմ հո-
վիւս է, ու իմ ամէն կամքս պիտի
կատարէ. ու Երուսաղէմին կ'ըսեմ
Թէ՝ Պիտի շինուիս, և տաճարին
Թէ՝ Քու հիմերդ պիտի ձգուին ։

ԳԼ. ԽԵ

1 Աստուած իր եկեղեցիին սիրոյն համար Կիւ-
րոսը կը կանչէ. 5 Իր ամենակարողութեանը

Ն. փ. գ. Ք. Իրր 712

ե Հռ. 24 ։ Գլ. խգ. 1, 14 ։
զ Գլ. խա. 4 ։ խը. 12 ։ Յայտ. ա. 8, 17 ։ իբ. 13 ։
է Գլ. խա. 4, 22 ։ խե. 21 ։
ը Գլ. խա. 22 ։
թ Գլ. խգ. 10, 12 ։
ժ Բ Օր. դ. 35, 39 ։ լբ. 39 ։ Ա Թագ. բ. 2 ։ Բ Թագ. իբ. 32 ։ Գլ. խե. 5 ։
ի Գլ. խա. 24, 29 ։
լ Սաղ. ճժե. 4, ևն ։
խ Երեմ. ժ. 5 ։ Ամբ. բ. 18 ։
ծ Սաղ. ղէ. 7 ։ Գլ. ա. 29 ։ խբ. 17 ։ խե. 16 ։
կ Գլ. խ. 19 ։ խա. 6 ։ Երեմ. ժ. 3, ևն ։

Ն. փ. գ. Ք. Իրր 712

հ Գլ. խե. 20 ։
ձ Բ Թես. բ. 10 ։
ղ Գլ. խզ. 8 ։
ճ Ովս. դ. 12 ։ Հռով. ա. 21 ։ Բ Թես. բ. 11 ։
մ Հռ. 1, 2 ։
* Կամ՝ ինծմէ պիտի չմոռցուիս ։
յ Գլ. խգ. 25 ։
ն Գլ. խգ. 1 ։ խը. 20 ։ Ա Կոր. զ. 20 ։ Ա Պետ. ա. 18, 19 ։
շ Սաղ. կթ. 34 ։ ղզ. 11, 12 ։ Գլ. խբ. 10 ։ խթ. 13 ։ Երեմ. ծա. 48 ։ Յայտ. ժը. 20 ։
ո Գլ. խգ. 14 ։ Հռ. 6 ։
չ Գլ. խգ. 1 ։
պ Յոբ. թ. 8 ։ Սաղ. ճդ. 2 ։ Գլ. խ. 22 ։ խբ. 5 ։ խե. 12 ։ ծա. 13 ։
ջ Երեմ. ծ. 36 ։
ռ Գլ. խե. 13 ։
ս Ա Կոր. ա. 20 ։
վ Զաք. ա. 6 ։
տ Յեմ Երեմ. ծ. 38 ։ ծա. 32, 36 ։
ր Բ Մն. լզ. 22, 23 ։ Եզր. ա. 1, ևն ։ Գլ. խե. 13 ։

Ն. Ք. Գ. Ք. իրր 712

*իրաւունքով հնազանդութիւն կը պահանջէ ժողովուրդէն. 20 իր փրկարար զօրութիւնը յիշելով՝ կը յանդիմանէ կուռքերուն ունայնութիւնը։*

1 Այսպէս կ՚ըսէ Տէրը իր օծեալ
Կիւրոսին, որուն աջ ձեռքը
բռնեցի, որ ազգերը անոր առջեւ
նուաճեցընեմ, ու թագաւորնե-
րուն մէջքը թուլցընեմ. և անոր
առջեւ դռներուն փեղկերը բա-
ցուին, ու դռները բնաւ չգոցուին.
2 Ես քու առջեւդ պիտի երթամ.
և խորտուբորտ տեղուանքը պիտի
շիտկեմ. պղնձէ դռները պիտի
փշրեմ, ու երկաթէ նիգերը պիտի
3 կոտրտեմ. Եւ քեզի խաւարի մէջ
ծածկուած գանձերը, ու պահուած
հարստութիւնները պիտի տամ.
որպէս զի գիտնաս թէ ես եմ
Տէրը՝ Իսրայէլին Աստուածը, որ
քու անունովդ կը կան-
4 չեմ։ Իմ Յակոբ ծառայիս հա-
մար, և իմ ընտրած Իսրայէլիս
համար, քեզ քու անունովդ կան-
չեցի. քեզի մականուն դրի,
5 թէև զիս չէիր ճանչնար։ Ես
եմ Տէրը, ու ուրիշ մը չկայ.
ինծմէ զատ Աստուած չկայ. ես
քեզի գօտի կապեցի, թէև զիս
6 չէիր ճանչնար. Որպէս զի արեւել-
քէն ու արեւմուտքէն գիտնան՝ որ
ինծմէ զատ մէկը չկայ. ես եմ Տէ-
7 րը, ու ուրիշ մը չկայ։ Լոյսը
հաստատողը, և խաւարը ստեղ-
ծողը, խաղաղութիւնը ընողը, ու
չարիքը ստեղծողը, աս ամէն բա-
ները ընողը՝ ես Տէրս եմ։
8 Ո՛վ երկինքներ՝ վերէն ցօղ կա-
թեցուցէք, և ամպերը արդարու-
թիւն տեղան. երկիրը բացուի,
ու փրկութեան պտուղ տայ, ու
մէկտեղ արդարութիւն բուսնի.
ասոնք ստեղծողը ես Տէրս եմ։
9 Վա՜յ անոր՝ որ իր Արարչին հետ
կը վիճի, խեցի երկրիս խեցինե-
րուն պէս խեցի մըն է". միթէ
կաւը զինքը ձեւացընողին կրնա՞յ ը-
սել թէ. Ի՞նչ կը շինես, կամ քու
գործդ կրնա՞յ քեզի ըսել թէ. Ձեռք
10 չունիս։ Վա՜յ անոր՝ որ իր հօրը
կ՚ըսէ. Ի՞նչ կը ծնանիս. ու իր
մօրը՝ Ի՞նչ կը բերես։
11 Այսպէս կ՚ըսէ Տէրը՝ Իսրայէլին
Սուրբը ու անոր Արարիչը. Գալու
բաներուն վրայով ինծի հարցու-
ցէք. իմ որդւոցս համար ու իմ
ձեռացս գործքերուն համար ինծի
12 պատուէր տուէք։ Երկիրը ես
շինեցի, ու անոր վրայ մարդը
ստեղծեցի. երկինքը իմ ձեռքերս
տարածեցին, և անոր բոլոր զօր-
13 քին ես պատուէր տուի։ Ես
զանիկայ արդարութեամբ արթըն-
ցուցի, ու անոր ամէն ճամբաները
պիտի շիտկեմ. անիկայ իմ քա-
ղաքս պիտի շինէ, և իմ աքսո-
րուածներս ետ պիտի դարձընէ
առանց գնոյ ու առանց կաշառ-
քի՝ կ՚ըսէ զօրաց Տէրը։
14 Տէրը այսպէս կ՚ըսէ. Եգիպտո-
սին վաստակը, ու Եթէովպացւոց,
և երկայնահասակ Սաբայեցւոց վա-
ճառականութիւնը քեզի պիտի
անցնի, ու քուկդ պիտի ըլլայ.
անոնք քու ետեւէդ պիտի քալեն,
և շղթաներով պիտի պտըտին,
ու քեզի երկրպագութիւն ընելով՝
քեզի պիտի աղաչեն, ըսելով.
Միայն քու մէջդ Աստուած կայ,
ու անկէ ՚ի զատ ուրիշ Աստուած
մը չկայ։
15 Յիրաւի դուն քեզ ծածկող Աս-
տուած մըն ես. ո՛վ Իսրայէլին
16 փրկիչ Աստուածը։ Անոնք ամէ-
նը պիտի ամչնան ու պատկառին.
կուռք շինողները մէկտեղ ամօ-
17 թով պիտի երթան։ Իսրայէլը
յաւիտենական փրկութիւնով Տէ-
րոջմէ պիտի փրկուի. դուք յաւի-
տեանս յաւիտենից պիտի չամըչ-
նաք, ու չպատկառիք։
18 Քանզի այսպէս կ՚ըսէ երկինքը
ստեղծող Տէրը, ան Աստուածը որ
երկիրը կազմեց, զանիկայ շինեց.
և հաստատեց. զանիկայ պարապ
տեղը չստեղծեց, հապա բնակու-
թեան համար կազմեց. Տէրը ես
19 եմ, ու ինծմէ ուրիշը չկայ։ Ես
ծածկաբար՝ երկրիս մութ տեղը
չխօսեցայ. Յակոբին սերունդին
չըսի թէ՝ Զուր տեղը զիս փնտռե-
ցէք. ես Տէրս արդարութիւն
կը խօսիմ, և ճշմարիտ բաներ կը
20 յայտնեմ։ Ժողվուեցէք ու ե-
կէք. մէկտեղ մօտեցէք դուք՝ ով
ազգերէն ազատուածներ. Անոնք
գիտութիւն չունին, որ իրենց
կուռքին փայտը կը կանգնեն, ու
փրկելու կարողութիւն չունեցող
21 աստուծոյ աղօթք կ՚ընեն։ Քա-
րոզեցէք, ու մօտեցուցէք.
և անոնք մէկտեղ խորհուրդ ընեն.
ասիկայ ՚ի սկզբանէ ո՞վ գիտցուց.
ան ժամանակէն ՚ի վեր ո՞վ պատ-
մեց. չէ՞ որ ես Տէրս, որ ինծմէ
զատ ուրիշ Աստուած չկայ, ու
ինծմէ ուրիշ ճշմարիտ Աստուած
22 ու Փրկիչ չկայ։ Ո՛վ երկրիս բո-
լոր ծայրերը՝ ինծի նայեցէք, որ
փրկուիք. քանզի ես եմ Աս-
տուած, և ինծմէ ուրիշը չկայ։
23 Իմ անձիս վրայ երդում ըրի.
իմ բերնէս արդարութեան խօսք
ելաւ. ու ետ չդառնար, որ ա-
մէն ծունկ ինծի պիտի կրկնուի,
և ամէն լեզու երդում պիտի

ա Գլ. խա. 13։
բ Գլ. խա. 2։ Դան. ե. 30
գ Գլ. ն. 4։
դ Սաղ. ճէ. 16։
ե Գլ. խա. 23։
զ Ել. լգ. 12. 17։ Գլ. խգ. 1։ խթ. 1։
է Գլ. խգ. 1։
ը Աթես. դ. 5։
թ Բ Օր. դ. 35. 39։ լբ. 39։ Գլ. խդ. 8։ խզ. 9։
ժ Հմր 14. 18. 21. 22։
ի Սաղ. ժը. 32. 39։
լ Սաղ. ճբ. 15։ Գլ. լե. 20։ Մաղ. ա. 11։
խ Ամով. գ. 6։
ծ Սաղ. հբ. 3։ ձե. 11։
* Եբր. տան,
կ Գլ. կդ. 8։
+ Կամ՝ խեցին՝ երկրիս խեցիներուն հետ [illegible]։
հ Գլ. իթ. 16։ Երեմ. ժը. 6։ Հռով. թ. 20։
ձ Երեմ. լա. 9։
ղ Ես. իթ. 23։
ճ Գլ. խբ. 5։ Երեմ. իէ. 5։
մ Ծն. ա. 26. 27։
յ Ծն. բ. 1։
ն Գլ. խա. 2։

Ն. Ք. Գ. Ք. իրր 712

շ Բ Մն. լզ. 22. 23։ Եզր. ա. 1, [illegible]։ Գլ. խդ. 28։
ո Գլ. ծբ. 3։ Տես Հռով. գ. 24։
չ Սաղ. կը. 31. հբ. 10. 11։ Գլ. խթ. 23։ կ. 9. 10. 14. 16։ Զաք. ը. 22. 23։
պ Սաղ. ճխթ. 8։
ջ Յակոբ ժդ. 25։
ռ Հմր 5։
ս Սաղ. խդ. 24։ Գլ. ը. 17։ ծէ. 17։
վ Գլ. խդ. 11։
տ Գլ. իզ. 4։ Հմր 25։ Հռով. ժա. 26։
ր Գլ. խբ. 5։
ց Հմր 5։
ւ Բ Օր. լ. 11։ Գլ. խը. 16։
փ Սաղ. ժթ. 8։ ճժթ. 137. 138։
ք Գլ. խդ. 17. 18. 19։ խզ. 7։ խը. 7։ Հռով. ա. 22. 28։
օ Գլ. խա. 22։ խդ. 9։ խդ. 7։ խզ. 10։ խը. 14։
ֆ Հմր 5. 14. 18։ Գլ. խդ. 8։ խզ. 9։ խը. 3։
ա Սաղ. իբ. 27։ կե. 5։
բ Ծն. իբ. 16։ Եբր. զ. 13. 14։
գ Հռով. ժդ. 11։ Փիլ. բ. 10։
դ Ծն. լա. 53։ Բ Օր. զ. 13։ Սաղ. կգ. 11։ Գլ. կե. 16։

Ն. Ք. Գ. Բ. Իբր 712

ի Երեմ. իգ. 5: ա Կոր. ա. 30:
ղ Գլ. խա. 11:
ի Հռմ 17:
ը Կոր. ա. 31:

24 ընէ ։ Մէկը պիտի ըսէ . Միայն
Տէրոջմով ի արդարութիւն ու զօ-
րութիւն ունիմ . անոր մէկը անոր
պիտի գայ . և ղ բոլոր անոր դէմ
բարկացողները պիտի ամչնան ։
25 ի Իսրայէլին բոլոր սերունդը Տէ-
րոջմով պիտի արդարանայ , ու
ը պիտի պարծենայ ։

## ԳԼ. ԽԶ

1 Բաբելոնի կուռքերը չեն կրնար զիրենք ազա-
տել ։ 3 Աստուած մինչև վերջը կը փրկէ իր
ժողովուրդը ։ 5 Պէտք չէ զԱստուած կուռ-
քերու հետ բաղդատել իր կարողութեանը 12
ու փրկութեանը կողմանէ ։

ա Գլ. իա. 9: Երեմ. ծ. 2: ծա. 44:
բ Երեմ. ժ. 5:
գ Երեմ. խը. 7:
դ Եւ. ժթ. 4: բ Օր. ա. 31: լբ. 11: Սաղ. հա. 6: Գլ. կգ. 9:
ե Սաղ. ճբ. 27: Մաղ. գ. 6:
զ Սաղ. խը. 14: հա. 18:
է Գլ. խ. 18. 25:
ը Գլ. խ. 19: խա. 6: խգ. 12. 19: Երեմ. ժ. 3:
թ Երեմ. ժ. 5:
ժ Գլ. խե. 20:
ի Գլ. խդ. 19: խէ. 7:
լ բ Օր. լբ. 7:
խ Գլ. խե. 5. 21:
ծ Գլ. խե. 21:
կ Սաղ. լգ. 11: Առակ. ժթ. 21: իա. 30: Գործ. ե. 39: Եբր. զ. 17:
հ Գլ. խա. 2. 25:
ձ Գլ. խդ. 25: խե. 13:

1 Բէլը ա խոնարհեցաւ . Նաբաւը
ծռեցաւ . անոնց կուռքերը
կենդանիներու ու անասուններու
վրայ էին . ձեր բեռցուած բեռ-
ները բ յոգնած անասունին ծանրու-
2 թիւն եղան ։ Անոնք ծռեցան , ու
մէկտեղ խոնարհեցան . բեռը ա-
զատելու կարող չեղան , գ և իրենք
ալ գերութեան գացին ։
3 Ինծի մտիկ ըրէք՝ ով Յակոբին
տունը , ու Իսրայէլի տանը բոլոր
մնացորդը , դ որ ձեզ որովայնէ կը
կրեմ , և արգանդէ կը վերցընեմ .
4 Մինչև ձեր ծերութիւնը անգամ ե ես
նոյն եմ . ու մինչև ձեր ալևորու-
թիւնը զ ես ձեզ պիտի կրեմ . ես
ստեղծեցի , ու ես պիտի վերցընեմ .
ես պիտի կրեմ , ու պիտի ազա-
տեմ ։
5 է Զիս՝ որո՞ւ կը նմանցընէք , և
որո՞ւ հաւասար կը սեպէք , ինծի
ի՞նչ նմանութիւն կը շինէք , որ
6 նման ըլլանք ։ ը Քսակէն ոսկի կը
թափեն , ու կշիռքով արծաթ կը
կշռեն . վարձքով ոսկերիչ կը բռ-
նեն , որ անով աստուած կը շինէ .
անոր կը պաշտեն , և անոր երկրը-
7 պագութիւն կ'ընեն ։ թ Զանիկայ
ուսերու վրայ կը վերցընեն կը տա-
նին , իր տեղը կը հաստատեն , ու
կը կայնի . անիկայ իր տեղէն չշար-
ժիր . և ժ թէ որ մէկը անոր աղա-
ղակէ , պատասխան չտար . զանի-
կայ իր նեղութենէն չազատեր ։
8 Ասիկայ յիշեցէ՛ք , ու մա՛րդ ե-
ղէք , ի միտքերնիդ բերէ՛ք՝ ով յան-
9 ցաւորներ , Լ'ի յաւիտենից եղած
առջի բաները յիշեցէ՛ք . քանզի ես
եմ Աստուած , և խ ինծմէ ուրիշը
չկայ . ես եմ Աստուած , և ինծի
10 պէս մէկը չկայ , Որ ծ վերջինը՝ սկիզ-
բէն , ու դեռ չեղածը՝ առաջուընէ
պատմեցի . ու կ'ըսեմ թէ՝ կ իմ
խորհուրդս պիտի հաստատուի , և
իմ ամէն կամքս պիտի կատարեմ ։
11 Ես եմ որ հ արևելքէն գիշատիչ
թռչունը կը կանչեմ , ու հեռու
երկրէ՝ ձ իմ խորհուրդս 'ի գործ դնե-
լու մարդը . ղես խօսեցայ , ու ես
պիտի կատարեմ . ես խորհեցայ ,
12 ու ես 'ի գործ պիտի դնեմ ։ Ո՛վ
ճ արդարութենէ հեռացած խստա-
13 սիրտներ՝ ինծի մտիկ ըրէք . մ իմ
արդարութիւնս մօտեցուցի . անի-
կայ պիտի չհեռանայ . և իմ փըր-
կութիւնս յ պիտի չուշանայ . ու
իմ փառքս եղող Իսրայէլին համար
ն Սիօնի մէջ փրկութիւն պիտի դը-
նեմ ։

## ԳԼ. ԽԷ

1 Աստուծոյ դատաստանը Բաբելոնի ու Քաղ-
դէացւոց վրայ՝ 6 իրենց անգթութեանը , 7
ամբարտաւանութեանը , 10 և յանդգնու-
թեանը համար՝ 11 անհրաժեշտ պիտի ըլլայ ։

1 Ո՛վ Բաբելոնի կոյս աղջիկը՝ ա ի-
ջի՛ր , ու բ հողի վրայ նստէ . ո՛վ
Քաղդէացւոց աղջիկը՝ գետնի վրայ
առանց աթոռի՛ նստէ . քանզի
մէյմըն ալ քնքուշ ու փափուկ պի-
2 տի չկոչուիս ։ գ Աղօրիքին քարերը
ա՛ռ , ալի՛ւր աղա . լաչակդ հանէ՛ ,
քղանցքդ վերցո՛ւր , սրունքդ բաց ,
3 գետերէն անցիր ։ դ Թող քու մեր-
կութիւնդ բացուի՛ , և նախա-
տինքդ ալ երևնայ . ե վրէժ
պիտի առնեմ , ու մարդու մը միջ-
նորդութիւնը պիտի չընդունիմ ։
4 ( զ Մեր Փրկչին անունը՝ * Եհովայ
Սաբաւովթ " է . անիկայ Իսրայէլին
5 Սուրբն է ։ ) Լո՛ւռ նստէ , խաւա-
րի մէ՛ջ մտի՛ր՝ ո՛վ Քաղդէացւոց
աղջիկը՝ է քանզի մէյմըն ալ թագա-
ւորութեանց տիկին պիտի չկո-
6 չուիս ։ ը Ես իմ ժողովուրդիս
բարկացայ , ու թ իմ ժառանգու-
թիւնս պղծեցի , ու զանոնք քու
ձեռքդ տուի . դուն անոնց գթու-
թիւն չցուցուցիր . ժ ծերերուն վրայ
քու լուծդ խիստ ծանրացուցիր .
7 Եւ ըսիր . Ես ի յաւիտեան տիկին
պիտի մնամ . այնպէս որ Լասիկայ
մտքիդ մէջը չդրիր , խ անոր վախ-
8 ճանը չյիշեցիր ։ Ու հիմա մտիկ
ըրէ՝ ով անհոգութեամբ նստող
հեշտասէր , որ սրտիդ մէջը կ'ը-
սես . ծ Ես եմ , ու ինծմէ ուրիշը
չկայ . կ որբևարի պիտի չնստիմ ,
ու անզաւակութիւն պիտի չգիտ-
9 նամ ։ Հիմա հ ասոնց երկուքն ալ՝
թէ անզաւակութիւնը և թէ որբ-
ևարութիւնը՝ ձ յանկարծ մէկ օ-
րուան մէջ քու վրադ պիտի գան .
ղ քու դիւթութիւններուդ շա-
տութեանը մէջ , և քու անթիւ
կախարդութիւններուդ մէջ , ա-
նոնք ամբողջ քու վրադ պիտի գան ։
10 Ու դուն ճ քու չարութեանդ ապա-
ւինեցար , մ ու ըսիր . Զիս տեսնող
չկայ ։ Քեզ գլխէ հանողը՝ քու
իմաստութիւնդ ու գիտութիւնդ
է . յ և սրտիդ մէջը ըսիր . Ես եմ ,

Ն. Ք. Գ. Բ. Իբր 712

ղ Թուոց իգ. 19:
ճ Հռով. ժ. 3:
մ Գլ. ծա. 5: Հռով. ա. 17: գ. 21:
յ Ա Պետ. բ. 3:
ն Գլ. կբ. 11:

ա Երեմ. խը. 18:
բ Գլ. գ. 26:
գ Ել. ժա. 5: Դատ. ժզ. 21: Մատ. իդ. 41:
դ Գլ. գ. 17: ի. 4: Երեմ. ժգ. 22. 26: Նաւ. գ. 5:
ե Հռով. ժբ. 19:
զ Գլ. խգ. 3. 14: Երեմ. ծ. 34:
* Տէր զօրութեանց
է Հմր 7: Գլ. ժգ. 19: Դան. բ. 37:
ը Տես Բ Թագ. իդ. 14: Բ Մն. իը. 9: Զաք. ա. 15:
թ Գլ. խգ. 28:
ժ Բ Օր. իը. 50:
ի Հմր 5: Յայտ. ժը. 7:
լ Գլ. խզ. 8:
խ Բ Օր. լբ. 29:
ծ Հմր 10: Սոփ. բ. 15:
կ Յայտ. ժը. 7:
հ Գլ. ծա. 19:
ձ Ա Թես. ե. 3:
ղ Նաւ. գ. 4:
ճ Սաղ. ծբ. 7:
մ Գլ. իթ. 15: Եզեկ. ը. 12: թ. 9:
յ Հմր 8:

Ն. Ք. ԳՓ. Իբր 712

11 ու լինելիք ուրիշը չկայ ։ Անոր հա-
մար քու վրադ մէկ ձախորդութիւն
մը պիտի գայ, որ անոր ուսկից
ծագիլը պիտի չգիտնաս. և քու
վրադ թշուառութիւն մը պիտի
իյնայ, որ զանիկայ ետ դարձընե-
լու կարող պիտի չըլլաս. ու քու
վրադ ⁿյանկարծ աւերում մը պիտի
գայ, որ դուն զանիկայ պիտի չգիտ-
12 նաս ։ Հիմա քու կախարդութիւն-
ներուդ և շատ դիւթութիւններուդ
մէջը կեցիր, որոնցմով քու ման-
կութենէդ 'ի վեր աշխատեր ես.
գուցէ օգուտ մը գտնելու կարող
ըլլաս, գուցէ կարենաս յաղթել ։
13 ˢԽորհուրդներուդ շատութենէն
ձանձրացար. հիմա ᵒերկինքը զըն-
նողները, աստեղագէտները, նոր
ամիսներով գուշակութիւն ընող-
ները թող ելլեն, և քու վրադ
14 գալու բաներէն քեզ ազատեն ։ Ա-
հա անոնք ˢմղեղի պէս պիտի ըլլան,
ու զանոնք կրակը պիտի այրէ. ի-
րենց հոգին բոցին զօրութենէն
պիտի չկրնան ազատել. տաքնալու
համար կայծ մը՝ կամ դիմացը նըս-
տելու համար կրակ մը պիտի չմը-
15 նայ ։ Այսպէս պիտի ըլլան քեզի
անոնք՝ որոնց հետ աշխատեցար,
ու մանկութենէդ 'ի վեր առուտուր
ըրիր. ամէն մէկը իր ճամբան եր-
թալով՝ ցիրուցան պիտի ըլլան, ու
քեզ ազատող մը պիտի չըլլայ ։

ⁿՍաղ. ծե. 8 ։
ˢԳլ. ծե. 10 ։
ᵒԳլ. խդ. 25 ։ Դան. բ. 2 ։
ˢՆաւ. ա. 10 ։ Մաղ. գ. 1 ։

ԳԼ. ԽԸ

1 Աստուած իր մարգարէութիւնները կը յայտնէ, որ ժողովուրդը յանդիմանէ իրենց կամակորութեանը համար. 9 իր փառացը համար զանոնք կը փրկէ. 12 իր կարողութիւնը ու նախախնամութիւնը յառաջ բերելով՝ զանոնք հնազանդութեան կը յորդորէ. 16 անոնց բթամտութեանը վրայ կ'ողբայ. 20 իր ժողովուրդը մեծ զօրութեամբ կը փրկէ Բաբելոնէն ։

1 Լսեցէ՛ք ասիկայ ո՛վ Յակոբի տու-
նը, որ Իսրայէլին անունովը
կանչուած էք, ու ᵃՅուդային
*աղբիւրէն ելեր էք, և ᵇՏէրոջը
անունովը երդում կ'ընէք, ու Իս-
րայէլին Աստուածը կը յիշէք.
ᶜբայց ճշմարտութեամբ չէ, ու
2 արդարութեամբ չէ ։ (Քանզի ա-
նոնք ᵈՍուրբ քաղաքին անունո-
վը կը յիշուին, և ᵉԻսրայէլի Աս-
տուծոյն կը կռթընին, որուն ա-
նունը Ամենակալ Տէր է ։)
3 ᶠԱռջի բաները հին ժամանակէն
'ի վեր պատմեցի. ու անոնք իմ
բերնէս ելան, և զանոնք իմացու-
ցի. յանկարծ ըրի, ու ե-
4 ղան ։ Որովհետև գիտէի որ դուն
խիստ ես, և ᵍքու պարանոցդ եր-
կաթէ ջիղեր ունի, ու պղնձէ ճա-
5 կատ մը ունիս ։ ʰՈւստի քեզի հին
ժամանակէն 'ի վեր պատմեցի, ու

ᵃՍաղ. կը. 26 ։
*Եբր. ջուրերէն
ᵇԲ Օր. զ. 13 ։ Գլ. կե. 16 ։ Սոփ. ա. 5 ։
ᶜԵրեմ. դ. 2 ։ ե. 2 ։
ᵈԳլ. ծբ. 1 ։
ᵉՄիք. գ. 11 ։ Հռով. բ. 17 ։
ᶠԳլ. խա. 22 ։ խբ. 9 ։ խդ. 9 ։ խդ. 7, 8 ։ խե. 21 ։ խզ. 9, 10 ։
ᵍԵզեկ. խա. 45 ։
ʰԵւ. լթ. 9 ։ Բ Օր. լա. 27 ։
ⁱՀմր 8 ։

դեռ չեղած՝ քեզի իմացուցի, որ
չըլլայ թէ ըսես. Զանոնք իմ ար-
ձանս ըրաւ, և իմ քանդակած ու
6 ձուլածոյ կուռքս հրամայեց ։ Դուն
անոնք լսեցիր. նայէ անոնց ամէնը
կատարուեցան. ու դուք զանիկայ
պիտի չհրատարակէ՞ք. ես քեզի
ասկէ ետքը նոր ու ծածուկ բաներ
պիտի գիտցընեմ, որ դուն անոնք
7 չգիտցար ։ Անոնք հիմա ստեղ-
ծուեցան, և չէ թէ առաջուց. ու
այս օրէս առաջ զանոնք չլսեցիր,
որ չըլլայ թէ ըսես. Ահա զանոնք
8 գիտցայ ։ Դուն ո՛չ լսեցիր, ո՛չ ալ
գիտցար. և սկիզբէն քու ականջդ
չբացուեցաւ. վասն զի գիտցայ որ
դուն խիստ նենգաւոր ես, ու դուն
ᵃորովայնէ ապստամբ կոչուեցար ։
9 Ես ᵇիմ անուանս համար նեղսր-
տութիւնս պիտի ուշացընեմ. և
իմ փառացս համար համբերող
պիտի ըլլամ քեզի, որ քեզ չկոր-
10 սընցընեմ ։ ᶜԱհա քեզ մաքրեցի,
բայց չէ թէ ᵈարծաթի պէս.
ես քեզ նեղութեան հալոցին մէջը
11 փորձեցի ։ ᵉԻնծի համար՝
ինծի համար պիտի ընեմ. ᶠքանզի
իմ անունս ինչո՞ւ պղծուի. ու ᵍես
իմ փառքս ուրիշին չեմ տար ։
12 Ո՛վ Յակոբ՝ ու իմ կանչած Իսրա-
յէլս՝ ինծի մտիկ ըրէ. ʰԵս նոյն
եմ, ⁱառաջինը ես եմ, վերջինն
13 ալ ես եմ ։ ʲՆաև երկիրը իմ
ձեռքս հիմնեց, ու երկինքը իմ
աջ ձեռքս տարածեց. երբոր ᵏես
անոնք կանչեմ, անոնք մէկտեղ կը
14 կայնին ։ ˡԱմէնքդ ժող-
վուեցէ՛ք ու մտիկ ըրէք. անոնցմէ
ո՛վ պատմեց աս բաները. ᵐՏէրոջը
սիրածը՝ ⁿԲաբելոնի մէջ անոր կամ-
քը 'ի գործ պիտի դնէ, և իր բա-
զուկը Քաղդէացւոց վրայ պիտի եր-
15 կընցընէ ։ Ես՝ ես խօսեցայ, ու
ᵒզանիկայ կանչեցի, անիկայ բերի,
և անոր ճամբան յաջող պիտի ըլ-
16 լայ ։ Ինծի մօտեցէք. ասիկայ
լսեցէ՛ք. ᵖառաջուց ծածուկ չխօ-
սեցայ. աս բաները եղած ժամանա-
կէն 'ի վեր ես հոն եմ. ու հիմա զիս
ᵠՏէր Եհովան ու անոր Հոգին ղրր-
17 կեց ։ Այսպէս կ'ըսէ Տէրը՝ ʳքու
Փրկիչդ՝ Իսրայէլին Սուրբը. Ես
եմ քու Տէր Աստուածդ, որ քեզի
օգտակար եղածը կը սորվեցընեմ,
ու ˢքալելու ճամբուդ մէջ քեզ
18 կ'առաջնորդեմ ։ ᵗԵրանի թէ իմ
պատուիրանքս մտիկ ընէիր. ᵘայն
ատենը քու խաղաղութիւնդ գետի
պէս, ու արդարութիւնդ ծովուն
19 ալիքներուն պէս պիտի ըլլար. ᵛՆաև
քու սերունդդ աւազի չափ՝ ու ո-
րովայնիդ ծնունդը անոր ‡խիճին
չափ պիտի ըլլար. անոր անունը

Ն. Ք. ԳՓ. Իբր 712

ᵃՍաղ. ծը. 3 ։
ᵇՍաղ. հթ. 9 ։ ճզ. 8 ։ Գլ. խգ. 25 ։ Հմր 11 ։ Եզեկ. ի. 9, 14, 22, 44 ։
ᶜՍաղ. հը. 38 ։
ᵈՍաղ. կզ. 10 ։
ᵉՅէս Եզեկ. ի. 20, 21, 22 ։
†Կամ՝ արծաթով.
ᶠՀմր 9 ։
ᵍՅէս բ Օր. լբ. 26, 27 ։ Եզեկ. ի. 9 ։
ʰԳլ. խբ. 8 ։
ⁱԲ Օր. լբ. 39 ։
ʲԳլ. խա. 4 ։ խդ. 6 ։ Յայտ. ա. 17 ։ իբ. 13 ։
ᵏՍաղ. ճբ. 25 ։
ˡԳլ. խ. 26 ։
ᵐԳլ. խա. 22 ։ խգ. 9 ։ խդ. 7 ։ խե. 20, 21 ։
ⁿԳլ. խե. 1 ։
ᵒԳլ. խդ. 28 ։
ᵖԳլ. խե. 1, 2 ։
ᵠԳլ. խե. 19 ։
ʳԳլ. կա. 1 ։ Զաք. բ. 8, 9, 11 ։
ˢԳլ. խգ. 14 ։ խդ. 6, 24 ։ Հմր 20 ։
ᵗՍաղ. լբ. 8 ։
ᵘԲ Օր. լբ. 29 ։ Սաղ. ձա. 13 ։
ᵛՍաղ. ճժթ. 165 ։
ʷԾն. իբ. 17 ։ Ովս. ա. 10 ։
‡Կամ՝ որովայնին ծընունդին

Ն. Ք. ՂԲ. Իրր 712

իմ առջեւէս պիտի չկտրուէր , ու
չկրսուէր ։
20 [ա] Բաբելոնէն ելէք , Քաղդէացի-
ներէն փախէք․ ահիկայ յաղթու-
թեան երգով պատմեցէք , [բ] հրա-
տարակեցէք․ ահիկայ մինչև երկրիս
ծայրը տարածեցէք , ըսելով․ Տէրը
21 [բ] իր Յակոբ ծառան փրկեց ։ Ու
երբոր զանոնք անապատներու մէջ
պտըտցուց , [գ] չծարաւեցան․ [դ] ա-
նոնց համար վէմէն ջուրեր վազ-
ցուց․ վէմը պատռեց , ու անկէ
22 ջուրեր բղխեց ։ [ե] Ամբարիշտները
խաղաղութիւն պիտի չունենան ,
կ'ըսէ Տէրը ։

ա Գլ. ծբ. 11 ։ Երեմ. ծ. 8 ։ ծա. 6, 45 ։ Զաք. բ. 6, 7 ։ Յայտ. ժը. 4 ։
բ Ել. ժթ. 4, 5, 6 ։ Գլ. խգ. 22, 23 ։
գ Տես Գլ. խա. 17, 18 ։
դ Ել. ժէ. 6 ։ Թուոց ի. 11 ։ Սաղ. ճե. 41 ։
ե Գլ. ծէ. 21 ։

## ԳԼ. ԽԹ

1 Քրիստոս Հրեաներուն խրկուած ըլլալով , անոնցմէ կը գանգատի․ 5 Հեթանոսներուն կը խրկուի իր շնորհացը խոստմունքներով ։ 13 Աստուծոյ մշտնջենաւոր սէրը իր եկեղեցիին վրայ ։ 18 Եկեղեցիին գերեդարձութիւնը և զարդանալը ։

1 [ա] Ով կղզիներ՝ ինծի մտիկ ըրէք ,
ու ով ժողովուրդներ՝ հեռուէն
ականջ տուէք․ [բ] Տէրը զիս ար-
գանդէն կանչեց․ իմ անունս մօրս
2 որովայնէն յիշեց․ Եւ [գ] իմ բերանս
սրած թուրի պէս ըրաւ , [դ] զիս իր
ձեռքին հովանիին տակը ծածկեց ,
և զիս [ե] փայլուն նետի պէս ըրաւ․
իր կապարճին մէջը պահեց զիս․
3 Եւ ինծի ըսաւ․ [զ] Դուն իմ ծառաս
ես , ով Իսրայէլ՝ [է] որ քեզմով պի-
4 տի փառաւորուիմ ։ [ը] Ու ես ըսի․
Պարապ տեղը աշխատեցայ․ իմ
զօրութիւնս ոչինչ ու դատարկ
տեղը գործածեցի․ բայց իմ իրա-
ւունքս Տէրոջը առջևն է , և իմ
գործքս իմ Աստուծոյս քովն է ։
5 Ու հիմա այսպէս կ'ըսէ Տէրը՝ [թ] որ
զիս որովայնէ իրեն ծառայ ըլլալու
համար ստեղծեց , որ Յակոբը անոր
դարձնեմ , և [ժ] Իսրայէլը անոր
ժողվուի , որ Տէրոջը առջևը փա-
ռաւորուիմ , և իմ Աստուածս
6 ինծի զօրութիւն ըլլայ․ Այսպէս
կ'ըսէ․ Յակոբին ցեղերը նորէն
հաստատելու համար , ու Իսրայէ-
լին ազատուածները դարձնելու
համար , իմ ծառաս ըլլալդ քեզի
քիչ է․ ահա քեզ [ի] ազգերուն լոյս
պիտի դնեմ , որ մինչև երկրին
ծայրը իմ փրկութիւնս ըլլաս ։
7 Այսպէս կ'ըսէ Տէրը՝ Իսրայէլին
Փրկիչը՝ անոր Սուրբը [լ] անարգուած
անձին՝ ազգաց ատելի եղողին՝ իշ-
խանաց ծառային․ [խ] Թագաւորները
պիտի տեսնեն , ու ոտք պիտի ել-
լեն․ իշխաններն ալ երկրպագու-
թիւն պիտի ընեն , Տէրոջը համար՝
որ հաւատարիմ է , Իսրայէլի Սուր-
բին համար՝ որ քեզ ընտրեր է ։
8 Տէրը այսպէս կ'ըսէ․ [ծ] Ընդունելի

ա Գլ. խա. 1 ։
բ Հմր 5 ։ Երեմ. ա. 5 ։ Մատ. ա. 20, 21 ։ Ղուկ. ա. 15, 31 ։ Յովհ. ժ. 36 ։ Գաղ. ա. 15 ։
գ Գլ. ժա. 4 ։ ծա. 16 ։ Ովս. զ. 5 ։ Եբր. դ. 12 ։ Յայտ. ա. 16 ։
դ Գլ. ծա. 16 ։
ե Սաղ. խե. 5 ։
զ Գլ. խբ. 1 ։ Զաք. գ. 8 ։
է Գլ. խդ. 23 ։ Յովհ. ժգ. 31 ։ ժե. 8 ։ Եփե. ա. 6 ։
ը Եզեկ. գ. 19 ։
թ Հմր 1 ։
ժ Մատ. իգ. 37 ։
ի Գլ. խբ. 6 ։ կ. 3 ։ Ղուկ. բ. 32 ։ Գործ. ժգ. 47 ։ իզ. 18 ։
լ Գլ. ծգ. 3 ։ Մատ. իզ. 67 ։
խ Սաղ. հբ. 10, 11 ։ Հմր 23 ։
ծ Տես Սաղ. կթ. 13 ։ Բ Կոր. զ. 2 ։

ժամանակի մը մէջ քեզի լսեցի , և
փրկութեան օրը քեզի օգնութիւն
ըրի , ու քեզ պահեցի , [կ] և ժողո-
վուրդին ուխտ ըլլալու տուի , որ
երկիրը հաստատես , ու աւրուած
ժառանգութիւնները ժառանգեցը-
9 նես․ Եւ [հ] կապուածներուն ըսես․
Ելէք , ու խաւարի մէջ եղողնե-
րուն՝ Յայտնուեցէք ։ Անոնք ճամ-
բաներու վրայ պիտի արածին , և
անոնց արօտը ամէն բլուրներու
10 վրայ պիտի ըլլայ ։ Անոնք [ձ] պիտի
չանօթենան , ու չծարաւին․ և
[ղ] զանոնք խորշակը կամ արևը պիտի
չզարնէ․ քանզի անոնց ողորմու-
թիւն ընողը՝ [ճ] պիտի առաջնորդէ
անոնց , ու ջուրի աղբերակներուն
11 քովը պիտի տանի զանոնք ։ [մ] Եւ
ամէն լեռներս՝ ճամբաներ պիտի
ընեմ․ ու իմ պողոտաներս պիտի
12 բարձրանան ։ Ահա [յ] ոմանք հե-
ռուէն , և ահա ոմանք հիւսիսէն ,
ու արևմուտքէն , և ոմանք Սինէա-
13 ցւոց երկրէն պիտի գան ։ [ն] Ով
երկինք՝ ուրախ եղիք , ու ով երկիր՝
ցնծութիւն ըրէ , և ով լեռներ՝
ուրախութեան ձայնով աղաղակե-
ցէք․ քանզի Տէրը իր ժողովուր-
դին մխիթարութիւն տուաւ , ու
իր տնանկներուն ողորմեցաւ ։
14 [շ] Բայց Սիոնը ըսաւ․ Եհովան զիս
թողուց , ու Տէրը զիս մոռցաւ ։
15 [ո] Միթէ կնիկը իր կաթնկեր մանու-
կը կրնա՞յ մոռնալ , անանկ որ իր
որովայնին ծնունդեանը վրայ չգթայ․
թէև անոնք մոռնան , [չ] բայց ես
16 քեզ պիտի չմոռնամ ։ Ահա [պ] ես
քեզ իմ ձեռացս մէջ նկարագրեցի․
քու պարիսպներդ միշտ իմ առջևս
17 են ։ Քու տղաքներդ պիտի արտո-
րան․ [ջ] Քեզ փլցնողները և աւ-
18 րողները քեզմէ պիտի ելլեն ։ [ռ] Աչ-
քերդ վերցուր , ու բոլորտիքդ
նայէ․ ամէնը կը ժողվուին ու
քեզի կու գան․ Տէրը կ'ըսէ որ՝ Ես
կենդանի եմ․ անշուշտ անոնց ա-
մէնը [ս] զարդերու պէս պիտի հագ-
նիս , և անոնցմով հարսի պէս պի-
19 տի զարդարուիս ։ Քանզի քու ա-
ւերակներդ , ամայի տեղուանքդ ,
ու քու կործանմանդ երկիրը՝ [վ] հիմա
իր բնակիչներուն նեղ պիտի գայ․
և քեզ կլլողները պիտի հեռանան ։
20 [տ] Քու անզաւակութենէդ ետև
[ր] ծնանելու որդիքդ քու ականջնե-
րուդ պիտի ըսեն․ Աս տեղը ինծի
նեղ է․ տեղ տուր ինծի որ բնա-
21 կիմ ։ Ու դուն քու սրտիդ մէջը
պիտի ըսես․ Ասոնք ինծի ո՞վ
ծնաւ․ ես անզաւակ ու ամուլ էի․
ես գերի ու աքսորուած էի , ասոնք
ո՞վ մեծցուց․ ահա ես մինակ մնա-
ցեր էի , ասոնք ո՞ւր էին ։

Ն. Ք. ՂԲ. Իրր 712

կ Գլ. խբ. 6 ։
հ Գլ. խբ. 7 ։ Զաք. թ. 12 ։
ձ Յայտ. է. 16 ։
ղ Սաղ. ճիա. 6 ։
ճ Սաղ. իգ. 2 ։
մ Գլ. խ. 4 ։
յ Գլ. խգ. 5, 6 ։
ն Գլ. խդ. 23 ։
շ Տես Գլ. խ. 27 ։
ո Տես Սաղ. ճդ. 13 ։ Մաղ. գ. 17 ։ Մատ. է. 11 ։
չ Հռովմ. ժա. 29 ։
պ Տես Ել. ժգ. 9 ։ Երգ. ը. 6 ։
ջ Հմր 19 ։
ռ Գլ. կ. 4 ։
ս Առակ. ժէ. 6 ։
վ Տես Գլ. ծդ. 1, 2 ։ Զաք. բ. 4 ։ ժ. 10 ։
տ Մատ. գ. 9 ։ Հռովմ. ժա. 11, 12, 25 ։
ր Գլ. կ. 4 ։

Ն. Ք. ԴՔ. իրր 712

22 Այսպէս կ'ըսէ Տէր Եհովան.
Ահա իմ ձեռքս ազգերու վրայ պի-
տի վերցընեմ, ու իմ դրօշակս ժո-
ղովուրդներու մէջ պիտի կանգնեմ.
և անոնք քու տղաքներդ իրենց ծո-
ցին մէջը պիտի բերեն, ու քու
աղջիկներդ անոնց ուսերուն վրայ
23 պիտի վերցուին։ Եւ թագաւոր-
ները քու սնուցիչներդ պիտի ըլ-
լան, ու անոնց թագուհիները քու
դայեակներդ. երեսնին գետինը
ծռելով՝ քեզի երկրպագութիւն պի-
տի ընեն, ու ոտքերուդ փոշին
պիտի լզեն. և պիտի գիտնաս որ
ես եմ Տէրը. վասն զի ինծի ա-
պաւինողները պիտի չամչնան։
24 Միթէ հզօրէն աւարը կ'առնուի՞,
կամ *աչառկու մարդուն գերի ա-
25 ռածը կ'ազատի՞։ Բայց Տէրը այս-
պէս կ'ըսէ. Հզօրին գերի առածը
անգամ պիտի առնուի, ու բռնա-
ւոր մարդուն աւարը պիտի ազա-
տուի. ու քեզի հետ վիճողներուն
դէմ ես պիտի վիճիմ, և քու տը-
26 ղաքներդ ես պիտի ազատեմ։ Ու
քեզ հարստահարողներուն իրենց
մարմինները պիտի կերցընեմ. և
իրենց արիւնը նոր գինիի պէս
խմելով՝ պիտի գինովնան. և ամէն
մարմին պիտի գիտնայ թէ ես եմ
Տէրը՝ որ քեզ ազատեցի, ու քու
Փրկիչդ՝ Յակոբին Հզօրը։

## ԳԼ. Ծ

1 Քրիստոս կը ցուցնէ թէ Հրէից մերժուիլը իրեն պիտի չհամարուի, որովհետև ինքը փրկելու կարող է, 5 և այն գործը կատարելու յանձնառու եղեր է, 7 և Աստուծոյ օգնականութեանը ապաւիներ է։ 10 Աստուծոյ՝ և չէ թէ մեր անձերուն ապաւինելու յորդորանք մը։

1 Տէրը այսպէս կ'ըսէ. Ո՞ւր է ձեր
մօրը ապահարզանի թուղթը,
որով ես զանիկայ արձակեցի. կամ
ո՞վ է այն պարտատէրս՝ որուն ես
ձեզ ծախեցի. ահա դուք ձեր ան-
օրէնութեանցը համար ծախուե-
ցաք, ու ձեր մայրը ձեր յանցանա-
2 ցը համար արձակուեցաւ։ Ինչո՞ւ
համար իմ եկած ատենս մարդ մը
չկար, ու կանչած ատենս պա-
տասխան տուող մը չկար. միթէ
իմ ձեռքս բնաւ կարճըցա՞ւ՝ որ
փրկելու կարող չըլլամ, կամ թէ
ազատելու զօրութիւն չունի՞մ.
ահա իմ սաստելովս ծովը կը
ցամքեցընեմ. գետերը անապա-
տի կը դարձընեմ. անոնց ձուկե-
րը՝ ջուր չըլլալուն համար կը հո-
տին, ու ծարաւէն կը մեռնին։
3 Երկինքներուն խաւար կը հագ-
ցընեմ, ու ծածկոցի համար ա-
նոնց վրայ քուրձ կը դնեմ։
4 Տէր Եհովան ինծի իմաստուննե-
րու լեզու տուաւ, որ յոգնածին
խօսքով օգնել գիտնամ. ամէն
առտու կ'արթընցընէ. անի-
կայ իմ ականջս կ'արթընցընէ, որ
5 աշակերտներու պէս լսեմ։ Տէր
Եհովան իմ ականջս բացաւ, ու
ես անհնազանդ չեղայ, ետ չդար-
6 ձայ։ Իմ կռնակս՝ զարնողնե-
րուն, և այտերս՝ փետտողներուն
տուի. իմ երեսս նախատինքէն ու
7 թուքէն չծածկեցի։ Բայց Տէր
Եհովան ինծի կ'օգնէ. անոր հա-
մար ամօթապարտ պիտի չըլլամ.
անոր համար իմ երեսս գայլա-
խազի պէս ըրի, ու գիտեմ որ պի-
8 տի չամչնամ։ Զիս արդարացը-
նողը մօտ է. ո՞վ ինծի հետ պիտի
վիճի. մէկտեղ դատաստանի կայ-
նինք. իմ դատախազս ո՞վ է.
9 թող ինծի մօտենայ։ Ահա Տէր
Եհովան ինծի պիտի օգնէ. ո՞վ է
անիկայ որ զիս յանցաւոր պիտի
հանէ. ահա ամէնքը հանդերձի
պէս պիտի մաշին. ցեցը պիտի
ուտէ զանոնք։
10 Ձեր մէջը Տէրոջմէ վախցող,
անոր ծառային ձայնը մտիկ ընող
ո՞վ կայ, որ մութի մէջ կը քալէ,
ու բնաւ լոյս չունի. թող անի-
կայ Տէրոջը անուանը ապաւինի,
ու իր Աստուծոյն կռթնի։
11 Ահա դուք ամէնքդ՝ որ կրակ կը
վառէք, ու կայծերով կը շրջապա-
տիք. ձեր կրակին լոյսովը, ու ձեր
վառած կայծերուն մէջը քալե-
ցէք. ասիկայ ձեզի իմ ձեռքէս
պիտի ըլլայ. դուք տրտմու-
թեամբ պիտի պառկիք։

## ԳԼ. ԾԱ

1 Աստուծոյ ապաւինելու յորդորանք մը՝ 3 իր մխիթարական խոստմունքներուն, 4 և իր արդարութեանը ու փրկութեանը, 7 և մարդոց մահկանացութեանը համար։ 9 Քրիստոս իր սրբազան բազուկովը իրենները կը պաշտպանէ մարդոց երկիւղէն. 17 Երուսաղէմի թշուառութեանը վրայ կ'ողբայ, 21 ու փրկութիւն կը խոստանայ։

1 Ո՛վ դուք՝ արդարութեան հե-
տեւողներ, Տէրը փնտռող-
ներ՝ ինծի մտիկ ըրէք. դուք այն
վէմի՛ն նայեցէք, ուսկից որ կտրուե-
ցաք, և այն գուբին փոսին, ուսկից
2 որ փորուեցաք։ Ձեր հօրը Աբ-
րահամին՝ ու ձեզ ծնանող Սառա-
յին նայեցէք. քանզի անիկայ
կանչեցի՝ որ մէկ մարդ մըն էր, և
զանիկայ օրհնեցի, ու բազմացու-
3 ցի։ Վասն զի Տէրը Սիօնը պիտի
մխիթարէ. անոր բոլոր աւերակ-
ները պիտի մխիթարէ. և անոր ա-
նապատը Եդեմի պէս, ու անոր ա-
մայութիւնը Տէրոջը դրախտին
պէս պիտի ընէ. անոր մէջը ցնծու-

---

Ն. Ք. ԴՔ. իրր 712
ա Գլ. Կ. 4։ ԿԴ. 20։
բ Սաղ. ՀԲ. 11։ Հմր 7։ Գլ. ԾԲ. 15։ Կ. 16։
գ Սաղ. ՀԲ. 9։ Միք. Է. 17։
դ Սաղ. ԼԴ. 22։ Հռով. Ե. 5։ Թ. 33։ Ժ. 11։
ե Մատ. ԺԲ. 29։ Ղուկ. ԺԱ. 21, 22։
* Կամ՝ իրաւունք ունեցող
զ Գլ. Թ. 20։
է Յայտ. ԺԴ. 20։ ԺԶ. 6։
ը Սաղ. Թ. 16։ Գլ. Կ. 16։
ա Օր. ԻԴ. 1։ Երեմ. Գ. 8։ Ովս. Բ. 2։
բ Տես Դ Թագ. Դ. 1։ Մատ. ԺԸ. 25։
գ Գլ. ԾԲ. 3։
դ Առակ. Ա. 24։ Գլ. ԿԵ. 12։ ԿԶ. 4։ Երեմ. Է. 13։ ԼԵ. 15։
ե Թուոց ԺԱ. 23։ Գլ. ԾԹ. 1։
զ Սաղ. ՃԶ. 9։ Նաւ. Ա. 4
է Ել. ԺԴ. 21։
ը Յես. Գ. 16։
թ Ել. Է. 18, 21։
ժ Ել. Ժ. 21։
ի Յայտ. Զ. 12։
լ Ել. Դ. 11։

Ն. Ք. ԴՔ. իրր 712
ի Մատ. ԺԱ. 28։
ժ Սաղ. Խ. 6, 7, 8։
լ Մատ. ԻԶ. 39։ Յոհ. ԺԴ. 31։ Փիլ. Բ. 8։ Եբր. Ժ. 5, 7։
ծ Մատ. ԻԶ. 67։ ԻԷ. 26։ Յոհ. ԺԸ. 22։
յ Ովբ. Գ. 30։
ն Եզեկ. Գ. 8, 9։
շ Հռով. Ը. 32, 33, 34։
ո Յոբ. ԺԳ. 28։ Սաղ. ՃԲ. 26։ Գլ. ԾԱ. 6։
չ Գլ. ԾԱ. 8։
պ Սաղ. ԻԳ. 4։
ջ Մն. Բ. 20։ Սաղ. Ի. 7։
ռ Յոհ. Թ. 39։
ս Սաղ. ԺԶ. 4։
ա Հռով. Թ. 30—32։
բ Հմր 7։
գ Հռով. Դ. 1, 16։ Եբր. ԺԱ. 11, 12։
դ Ծն. ԺԲ. 1, 2։
ե Ծն. ԻԴ. 1, 35։
զ Սաղ. ՃԲ. 13։ Գլ. Խ. 1։ ԾԲ. 9։ Հմր 12։
է Ծն. ԺԳ. 10։ Յովէլ. Բ. 3։

թիւն և ուրախութիւն, գովու-
թիւն, և օրհնութեան ձայն պիտի
4 գտնուի ։ Ո՛վ իմ ժողովուրդս՝
ինծի մտիկ ըրէ, ո՛վ իմ ազգս՝
ինծի ականջ տուր. քանզի ինծմէ
օրէնք պիտի ելլէ. և իմ իրա-
ւունքս ժողովուրդներուն լոյս
ըլլալու համար պիտի հաստատեմ։
5 Իմ արդարութիւնս մօտ է. իմ
փրկութիւնս ելած է. ու իմ բա-
զուկներս ժողովուրդները պիտի
դատեն. կղզիները ինծի պիտի
յուսան, և իմ բազուկիս պիտի
6 ապաւինին ։ Աչքերնիդ վե՛ր
վերցուցէք դէպ 'ի երկինքը, ու
վա՛ր նայեցէք դէպ 'ի երկիրը. քան-
զի երկինքը ծուխի պէս պիտի
անցնի, ու երկիրը հանդերձի պէս
պիտի մաշի. Նմանապէս անոր
բնակիչներն ալ պիտի մեռնին.
բայց իմ փրկութիւնս յաւիտենա-
կան պիտի ըլլայ, ու իմ արդարու-
թիւնս պիտի չպակսի ։
7 Ինծի մտիկ ըրէք՝ ո՛վ արդարու-
թիւն ճանչցողներ, և իմ օրէնքս
ձեր սրտին մէջը ունեցող ժողովուրդ.
մարդոց նախատինքէն մի՛ վախ-
նաք, ու անոնց բամբասանքէն մի՛
8 զարհուրիք ։ Վասն զի ցեցը պի-
տի ուտէ զանոնք հանդերձի պէս,
և մեցը պիտի ուտէ զանոնք բուրդի
պէս. բայց իմ արդարութիւնս
յաւիտեան, ու իմ փրկութիւնս
ամէն դարերու մէջ պիտի ըլլայ ։
9 Արթնցի՛ր, արթնցի՛ր, ո՛վ
Տէրոջը բազուկը՝ զօրութիւն հա-
գի՛ր. արթնցի՛ր առջի օրերուն
պէս, շատոնցմէ անցած դարերուն
պէս. դուն անիկայ չե՞ս՝ որ Ռա-
հաբը ջարդեցիր, ու վիշապը վի-
10 րաւորեցիր ։ Դուն անիկայ չե՞ս
որ ծովը՝ մեծ անդունդին ջուրերը
ցամքեցուցիր, և ծովուն խորունկ
տեղուանքը ճամբայ ըրիր, որ փըր-
11 կուածները անկէ անցնին ։ Ու
Տէրոջը փրկածները պիտի դառ-
նան, ու երգերով Սիոն պիտի գան.
և անոնց գլխուն վրայ յաւիտենա-
կան ուրախութիւն պիտի ըլլայ.
անոնք ցնծութիւն ու ուրախու-
թիւն պիտի ստանան. տրտմու-
թիւնը ու հեծութիւնը անոնցմէ
պիտի հեռանայ ։
12 Ես եմ, ես եմ որ ձեզ կը մխի-
թարեմ. դուն ո՛վ ես՝ որ մահկա-
նացու մարդէն, ու խոտի նմանե-
լու մարդու զաւակէն կը վախնաս.
13 Եւ քեզ ստեղծող՝ երկինքները
տարածող՝ ու երկրին հիմերը դնող
Տէրը կը մոռնաս. ու բռնաւորին
սրտմտութենէն միշտ ամէն օր կը
վախնաս, իբր թէ քեզ կորսնցնե-
լու պատրաստուած է. բայց հի՞մ
ո՞ւր է բռնաւորին սրտմտութիւնը ։
14 Կապուածը շուտով պիտի արձը-
կուի, ու գուբին մէջը պիտի չը-
մեռնի, և իր հացը պիտի չպակսի ։
15 Քանզի քու Տէր Աստուածդ ես եմ՝
որ ծովը կը յանդիմանեմ, երբոր
անոր ալիքները կը գոռան. իմ
16 անունս Եհովայ Սաբաւովթ է ։ Ու
իմ խօսքերս քու բերանդ դրի, և
քեզ ձեռքիս հովանիովը ծածկե-
ցի, որ երկինքը հաստատեմ, ու
երկրին հիմերը դնեմ, և Սիոնին ը-
սեմ. Դուն իմ ժողովուրդս ես ։
17 Արթնցի՛ր, արթնցի՛ր ե-
լի՛ր՝ ո՛վ Երուսաղէմ, որ Տէրոջը
ձեռքէն անոր բարկութեանը բա-
ժակը խմեցիր. թմրութեան բա-
ժակին մրուրը քամելով խմեցիր ։
18 Անոր բոլոր ծնած որդիներէն՝ իրեն
առաջնորդող չկայ, ու բոլոր մեծ-
ցուցած տղաքներէն՝ իրեն ձեռնտու
19 չկայ ։ Աս երկու բաները քեզի
պատահեցան. ո՞վ քեզի պիտի
ցաւի. կործանում ու կոտորած,
սով ու սուր. քեզ ինչո՞վ մխի-
20 թարեմ ։ Քու տղաքդ մարած՝
ամէն փողոցներուն գլուխը կը
պառկին, որոգայթի մէջ բռնուած
յամոյրի պէս. անոնք Տէրոջը բար-
կութեամբը՝ քու Աստուծոյդ յան-
դիմանութեամբը լեցուած են ։
21 Ուրեմն ասիկայ մտիկ ըրէ՝ ո՛վ ո-
ղորմելի, որ արբած ես, բայց գի-
22 նիէն չէ՛ ։ Այսպէս կ'ըսէ քու Ե-
հովայ Տէրդ, և քու Աստուածդ՝
որ իր ժողովուրդին դատը կը
պաշտպանէ. Ահա՛ քու ձեռքէդ
թմրութեան բաժակը, իմ բար-
կութեանս բաժակին մրուրը առի.
զանիկայ մէյմըն ալ պիտի չխմես.
23 Եւ զանիկայ քեզ հարստահարող-
ներուն ձեռքը պիտի դնեմ, որոնք
քու անձիդ կ'ըսէին. Ծռէ՛ որ անց-
նինք. ու դուն կռնակդ՝ անցնող-
ներուն համար՝ գետնի պէս ու փո-
ղոցի պէս դրիր ։

## ԳԼ. ԾԲ

1 Տէրը կը յորդորէ եկեղեցին՝ որ իր ձրի փըրկութեանը հաւատայ. 7 և անոր պատգամաւորները ընդունի, 9 անոր մեծութեամբը ուրախանայ, 11 և ինքզինքը ծառայութենէ ազատէ ։ 13 Քրիստոսի թագաւորութեանը փառքը ։

1 Արթնցի՛ր, արթնցի՛ր, քու
զօրութիւնդ հագի՛ր՝ ո՛վ Սիոն.
քու փառաւոր հանդերձներդ հա-
գի՛ր՝ ո՛վ Երուսաղէմ սուրբ քա-
ղաք. քանզի մէյմըն ալ անթըլ-
փատ ու պիղծ մէկը քու մէջդ պիտի
2 չմտնէ ։ Փոշին քեզմէ թօթվէ՛,
ել նստէ՛ ո՛վ Երուսաղէմ. քու
պարանոցիդ կապերը քակէ՛, ո՛վ
3 Սիոնի դերի աղջիկը ։ Վասն զի

Ն. Ք. ՉՔ. ԺԲԲ 712

Գլ. բ. 3 ։ խբ. 4 ։
Գլ. խբ. 6 ։
Գլ. խզ. 13 ։ ծզ. 1 ։ Հռով. ա. 16, 17 ։
Սաղ. կէ. 4 ։ ղը. 9 ։
Գլ. կ. 9 ։
Հռով. ա. 16 ։
Գլ. խ. 26 ։
Սաղ. ճբ. 26 ։ Մատ. իդ. 35 ։ բ Պետ. գ. 10, 12 ։
Գլ. ծ. 9 ։
Կամ՝ մժեխի պէս
Հմր 1 ։
Սաղ. լէ. 31 ։
Մատ. ժ. 28 ։ Գոր. ե. 41 ։
Գլ. ծ. 9 ։
Սաղ. խդ. 23 ։ Գլ. ծբ. 1 ։
Սաղ. ղգ. 1 ։ Յայտ. ժա. 17 ։
Սաղ. խդ. 1 ։
Յոբ իզ. 12 ։
Սաղ. ձէ. 4 ։ ձթ. 10 ։
Սաղ. հդ. 13, 14 ։ Գլ. իէ. 1 ։ Եզեկ. իթ. 3 ։
Ել. ժդ. 21 ։ Գլ. խդ. 16 ։
Գլ. լե. 10 ։
Հմր 3 ։ բ Կոր. ա. 3 ։
Սաղ. ճժը. 6 ։
Գլ. խ. 6 ։ ա Պետ. ա. 24 ։
Յոբ. թ. 8 ։ Սաղ. ճդ. 2 ։ Գլ. խ. 22 ։ խբ. 5 ։ խդ. 24 ։
Յոբ. ի. 7 ։

Ն. Ք. ՉՔ. ԺԲԲ 712

Զաք. թ. 11 ։
Յոբ. իզ. 12 ։ Սաղ. հդ. 13 ։ Երեմ. լա. 35 ։
Օր. ժբ. 18 ։ Գլ. ծթ. 21 ։ Յօհ. գ. 34 ։
Գլ. խթ. 2 ։
Գլ. կե. 17 ։ կզ. 22 ։
Գլ. ծբ. 1 ։
Յոբ. իա. 20 ։ Երեմ. իե. 15, 16 ։
Տես բ Օր. իը. 28, 34 ։ Սաղ. կ. 3 ։ հե. 8 ։ Եզեկ. իգ. 32, 33, 34 ։ Զաք. ժբ. 2 ։ Յայտ. ժդ. 10 ։
Գլ. խէ. 9 ։
Ամով. է. 2 ։
Ողբ. բ. 11, 12 ։
Տես Հմր 17 ։ Ողբ. գ. 15 ։
Երեմ. ն. 34 ։
Երեմ. իե. 17, 26, 28 ։ Զաք. ժբ. 2 ։
Սաղ. կզ. 11, 12 ։

Գլ. ծա. 9, 17 ։
Նէեմ. ժա. 1 ։ Գլ. խը. 2 ։ Մատ. դ. 5 ։ Յայտ. իա. 2 ։
Գլ. լե. 8 ։ կ. 21 ։ Նաւ. ա. 15 ։ Յայտ. իա. 27 ։
Տես Գլ. գ. 26 ։ ծա. 23 ։
Զաք. բ. 7 ։

Տէրը այսպէս կ՚ըսէ . ՚Ձրի ծա-
խուեցաք , և առանց ստակի պիտի
4 փրկուիք ։ Քանզի Տէր Եհովան
այսպէս կ՚ըսէ . Իմ ժողովուրդս
առաջ ՚Եգիպտոս իջաւ , որ հոն
պանդխտութիւն ընէ . ու Ասորես-
տանցիք առանց պատճառի անոր
5 բռնութիւն ըրին ։ Եւ հիմա հոս
ի՞նչ ունիմ՝ կ՚ըսէ Տէրը , որ իմ
ժողովուրդս պարապ տեղը քշուե-
ցաւ . անոր վրայ իշխողները ՚ոռնէ-
՚լով կը պոռացընեն , կ՚ըսէ Տէրը , ու
միշտ ամէն օր իմ անունս ՚կը հայ-
6 հոյուի ։ Ասոր համար իմ ժողո-
վուրդս պիտի գիտնայ իմ անունս .
ասոր համար այն օրուան մէջ ՚պիտի
գիտնայ , թէ ես այն եմ՝ որ կը խօ-
սէի . ահա ես եմ ։

7 Ի՜նչ գեղեցիկ են լեռներուն վը-
րայ անոր ոտքերը , որ աւետիս կը
բերէ , խաղաղութիւն կը քարոզէ .
բարութեան աւետիս կը բերէ .
փրկութիւն կը քարոզէ , ՚Սիո-
նին կ՚ըսէ . ՚Քու Աստուածդ կը
8 թագաւորէ ։ ՚Քու պահապան-
ներդ ձայն պիտի վերցընեն . ցըն-
ծութեան ձայնով միաբերան պիտի
երգեն . քանզի երբոր Տէրը Սիօնը
ետ դարձնէ , անոնք *յայտնապէս
9 պիտի տեսնեն ։ Ո՛վ Երուսաղէմի
աւերակներ՝ ցնծութեան ձայնով
մէկտեղ աղաղակեցէ՛ք . ՚քանզի
Տէրը իր ժողովուրդը մխիթարեց ,
10 ՚Երուսաղէմը փրկեց ։ ՚Տէրը
իր սուրբ բազուկը մերկացուց բո-
լոր ազգաց աչքերուն առջեւ . ու
՚երկրիս ամէն ծայրերը մեր Աս-
տուծոյն փրկութիւնը պիտի տես-
նեն ։

11 ՚Քաշուեցէ՛ք , քաշուեցէ՛ք , ան-
կէ ելէ՛ք . պիղծ բանի մի՛ դպչիք .
անոր մէջէն ելէ՛ք . ՚մաքուր եղէ՛ք՝
ո՛վ Տէրոջը սպասները վերցընող-
12 ներ ։ Քանզի ՚չէ թէ արտորա-
լով պիտի ելլէք , և չէ թէ փախ-
չելով պիտի երթաք . ՚հապա Տէ-
րը ձեր առջեւէն պիտի երթայ , ՚ու
Իսրայէլին Աստուածը ձեզի թիկ-
նապահ պիտի ըլլայ ։

13 Ահա ՚իմ ծառաս յաջողութիւն
պիտի գտնէ , և ՚պիտի մեծնայ ,
ու պիտի բարձրանայ , ու խիստ
14 պիտի փառաւորի ։ Ինչպէս որ
շատերը †անոր վրայ" ապշեցան ,
(անոր ՚երեսը՝ մարդու երեսէն , ու
կերպարանքը՝ մարդու որդւոցմէն
աւելի աւրած ըլլալուն համար ,)
15 Այնպէս ալ շատ ազգեր պիտի
‡զարմացընէ . ՚թագաւորները ա-
նոր առջեւ իրենց բերանը պիտի
գոցեն . վասն զի ՚իրենց չպատ-
մուածը պիտի տեսնեն , և իրենց
չլսածը պիտի իմանան ։

Ն . Ք . ԶՓ . Իբր 712
՚Սաղ . խդ . 12 ։ Գլ . խե . 13 ։ Երեմ . ժե . 13 ։
՚Ծն . խզ . 6 ։ Գոր . է . 14 ։
՚Եզեկ . լզ . 20 , 23 ։ Հռով . բ . 24 ։
՚Նաւ . ա . 15 ։ Հռով . ժ . 15 ։
՚Սաղ . ղգ . 1 ։ ղզ . 10 ։ ղէ . 1 ։
* Կամ՝ դէմ յանդիման
՚Երբ Եւր . աչք աչքի
՚Գլ . ծա . 3 ։
՚Տես Գլ . խը . 20 ։
՚Տես Սաղ . ղը . 2 , 3 ։
՚Ղու . գ . 6 ։
՚Գլ . խը . 20 ։ Երեմ . ծ . 8 ։ ծա . 6 , 45 ։ Զաք . բ . 6 , 7 ։ բԿոր . զ . 17 ։ Յայտ . ժը . 4 ։
՚Ղև . իր . 2 . [illegible]
՚Տես Եւ . ժբ . 33 , 39 ։
՚Միք . բ . 13 ։
՚Գլ . ծր . 8 ։ Տես Եւ . ժգ . 19 ։ Թուէ . ժ . 25 ։
՚Գլ . խբ . 1 ։
՚Փիլ . բ . 9 ։
† Եբր . քու վրադ
՚Սաղ . իբ . 6 , 7 ։ Գլ . ծգ . 2 , 3 ։
‡ Կամ՝ սըրսկէ .
՚Գլ . խթ . 7 , 23 ։
՚Գլ . ծհ . 5 ։ Հռով . ժե . 21 ։ ժզ . 25 , 26 ։ Եփե . գ . 5 , 9 ։

ԳԼ . ԾԳ

1 Մարգարէն անհաւատութեան համար դան-
գատելով՝ խաչին գայթակղութիւնը կ՚արդա-
րացընէ . 4 յիշելով Քրիստոսի չարչարանքին
օգուտը . 10 և բարի յաջողութիւնը ։

1 ՚Ո՞վ հաւատաց մեր տուած լու-
րին , ու ՚Տէրոջը բազուկը
2 որո՞ւ յայտնուեցաւ ։ Քանզի ՚ա-
նիկայ՝ անոր առջեւ մատաղա-
տունկի պէս , և ծարաւուտ երկրէ
ելած արմատի պէս բուսաւ . ՚ա-
նիկայ կերպարանք կամ վայելչու-
թիւն չունէր՝ որ անոր նայէինք .
ո՛չ ալ անանկ երեւոյթ մը՝ որ անկէ
3 ախորժէինք ։ ՚Անիկայ մարդոցմէ
անարգուեցաւ , ու երեսէ ձգուե-
ցաւ . վշտաց տէր ու ՚ցաւոց
տեղեակ եղաւ . և անկէ երես
դարձնելու մարդու պէս եղաւ .
անարգուեցաւ , ու ՚զանիկայ
4 չյարգեցինք ։ Իրաւցընէ ՚ա-
նիկայ մեր ցաւերը վերցուց ,
ու մեր վիշտերը իր վրան ա-
ռաւ . և մենք զանիկայ վիրաւո-
րուած , Աստուծմէ զարնուած , ու
չարիքի հանդիպած սեպեցինք ։
5 Բայց անիկայ ՚մեր մեղքերուն հա-
մար վիրաւորուեցաւ , և մեր անօ-
րէնութիւններուն համար ծեծուե-
ցաւ . մեր խաղաղութեան պատի-
ժը անոր վրայ եղաւ . և անոր
՚վէրքերովը մենք բժշկուեցանք ։
6 ՚Ամէնքս ոչխարներու պէս մոլորե-
ցանք . ամէն մէկերնիս իր ճամ-
բուն դարձաւ . և Տէրը մեր ամե-
նուն անօրէնութիւնը անոր վրայ
7 դրաւ ։ Անիկայ անիրաւութիւն
կրեց , ու չարչարուեցաւ , բայց
՚իր բերանը չբացաւ . ՚մորթուե-
լու տարուող ոչխարի պէս , ու իր
խուզողներուն առջեւ մունջ կե-
ցող մաքիի պէս՝ անանկ իր բերա-
8 նը չբացաւ ։ ‖Նեղութեամբ և դա-
տապարտութեամբ" վերցաւ . ու
անոր ազգատոհմը ո՞վ կրնայ պատ-
մել . քանզի ՚անիկայ կենդանեաց
երկրէն կտրուեցաւ . անիկայ իմ
ժողովուրդիս յանցանքին համար
9 զարնուեցաւ ։ ՚Եւ անոր գերեզ-
մանը ամբարիշտներու հետ դրուե-
ցաւ . բայց երբոր մեռաւ , հա-
րուստին հետ եղաւ . §քանզի ա-
նիկայ անօրէնութիւն մը չգործեց ,
ու անոր բերնին մէջ ՚նենգութիւն
10 մը չգտնուեցաւ ։ Բայց Տէրը հա-
ճեցաւ որ զանիկայ ծեծելով ցա-
ւերու մատնէ . անոր անձը ՚մե-
ղաց համար զոհ *ըլլալէն ետքը՝
անիկայ սերունդ պիտի տեսնէ ,
՚իր օրերը պիտի երկնցընէ , ու
՚Տէրոջը կամքը անոր ձեռքովը
11 պիտի յաջողի ։ Իր անձին աշ-
խատութեանը պտուղը տեսնելով՝

Ն . Ք . ԶՓ . Իբր 712 .
՚Յով . ժբ . 38 ։ Հռով . ժ . 16 ։
՚Գլ . ծա . 9 ։ Հռով . ա . 16 ։ ա Կոր . ա . 18 ։
՚Գլ . ժա . 1 ։
՚Գլ . ծբ . 14 ։ Մար . թ . 11 ։
՚Սաղ . իբ . 6 ։ Գլ . խթ . 7 ։
՚Եբր . դ . 15 ։
՚Յով . ա . 10 , 11 ։
՚Մատ . ը . 17 ։ Եբր . թ . 28 ։ ա Պետ . բ . 24 ։
՚Հռով . դ . 25 ։ ա Կոր . ժե . 8 ։ ա Պետ . գ . 18 ։
՚ա Պետ . բ . 24 ։
՚Սաղ . ճժթ . 176 ։ ա Պետ . բ . 25 ։
՚Մատ . իզ . 63 ։ իէ . 12 , 14 ։ Մար . ժդ . 61 ։ ժե . 5 ։ ա Պետ . բ . 23 ։
՚Գոր . ը . 32 ։
‖ Կամ՝ Նեղութենէ և դատաստանէ
՚Դան . թ . 26 ։
՚Մատ . իէ . 57 , 58 , 60 ։
§ Կամ՝ թէև
՚ա Պետ . բ . 22 ։ ա Յով . գ . 5 ։
՚բ Կոր . ե . 21 ։ ա Պետ . բ . 24 ։
* Կամ՝ ընելէդ
՚Հռով . զ . 9 ։
՚Եփե . ա . 5 , 9 ։ բ Թես . ա . 11 ։

Ն․ Ք․ ԴՔ․ ԻՐՐ 712

ժ Ացօհ․ Բ․ 1։ ժ Գլ․ ԽԲ․ 1։ ԽԹ․ 3։ ն Յօհ․ ԺԷ․ 3։ Բ Պետ․ Ա․ 3։ լ Հռով․ Ե․ 18, 19։ ա Հմր 4, 5։ լ Սաղ․ Բ․ 8։ Փիլ․ Բ․ 9։ ղ Կող․ Բ․ 15։ ՚ Եբր․ Թակէց, խ Մատ․ ԺԵ․ 28։ Ղուկ․ ԻԲ․ 37։ ա Ղուկ․ ԻԳ․ 34։ Հռով․ Ը․ 34։ Եբր․ Է․ 25։ Թ․ 24։ ա Յօհ․ Բ․ 1։

ա Սոփ․ Գ․ 14։ Գաղ․ Դ․ 27։ Բ ա Թագ․ Բ․ 5։ Գ Գլ․ ԽԹ․ 19, 20։

Դ Գլ․ ԽԵ․ 5։ Կա․ 9։

Ի Զաք․ ԺԳ․ 9։ Հռով․ Գ․ 29։

Ղ Գլ․ ԿԲ․ 4։

Ի Սաղ․ Լ․ 5։ Գլ․ ԿԴ․ 20։ Կ․ 10։ Բ Կոր․ Դ․ 17։ † Կամ՝ Ցանկարծական

Ը Գլ․ ԾԵ․ 3։ Երեմ․ ԼԱ․ 3։

Ի ԾՆ․ Ը․ 21։ Թ․ 11։ Գլ․ ԾԵ․ 11։ ՏԵ․ Երեմ․ ԼԱ․ 35, 36։

պիտի կշտանայ ․ ժիմ արդար
ժծառաս՝ ՚իր գիտութեամբը ՚նշա֊
տերը պիտի արդարացընէ ․ ՚քանզի
անոնց անօրէնութիւնները ինքը
12 պիտի կրէ ։ ՚Անոր համար մե֊
ծերուն հետ բաժին պիտի տամ
անոր , ՚և հզօրներուն հետ աւա֊
րէն բաժին պիտի առնէ ․ քանզի
իր անձը մահուան *մատնեց , ու
՚յանցաւորներու հետ սեպուեցաւ ․
և շատերուն մեղքը վերցուց , ու
՚յանցաւորներուն համար միջնոր֊
դութիւն ըրաւ ։

ԳԼ․ ԾԴ․

1 Մարգարէն՝ հեթանոսներուն մխիթարութիւն ըլլալու համար , կը նախաձայնէ անոնց եկեղեցիին ընդարձակութիւնը , 4 անոնց ապահովութիւնը , 6 Նեղութենէ ազատուիլը , 11 յառաջադիմութիւնը , 15 և անոնց ապահովութեամբ պահպանուիլը ։

1 ՚Ո՜վ չծնանող ամուլ՝ ցնծա ․ ո՜վ
ծննդական ցաւ չքաշող՝ ցնծու֊
թեամբ գոչէ և աղաղակէ ․ ՚քան֊
զի երեսէ ձգուածին տղաքները
էրիկ ունեցողին տղաքներէն շատ
2 պիտի ըլլան , կ՚ըսէ Տէրը ։ ՚Վը֊
րանիդ տեղը լայնցո՛ւր , ու քու
բնակարանիդ վարագոյրները տա֊
րածուին ․ մի՛ խնայեր ․ չուաններդ
երկընցո՛ւր , ու ցիցերդ ամրացուր ։
3 Քանզի աջ ու ձախ կողմը պիտի
տարածուիս ․ ՚և քու սերունդդ
ազգեր պիտի ժառանգէ , ու աւրած
քաղաքները բնակիչներով պիտի
4 լեցընէ ։ Մի՛ վախնար , վասն զի
պիտի չամչնաս ․ ու մի՛ պատկա֊
ռիր , վասն զի պիտի չնախատուիս ․
քանզի քու մանկութեանդ ամօթը
պիտի մոռնաս , և քու որբևարու֊
թեանդ նախատինքը մէյմըն ալ
5 պիտի չյիշես ։ Քանզի քու էրիկդ
քու Ստեղծիչդ է ․ անոր անունը
Եհովայ Սաբաւովթ է ․ ու քու
Փրկիչդ Իսրայէլին Սուրբն է ․ ՚Ա֊
նիկայ բոլոր երկրին Աստուածը
6 պիտի կոչուի ։ Քանզի Տէրը քեզ՝
՚երեսէ ձգուած և հոգւով վըշ֊
տացած կնկան պէս , ու մերժուած
նորահասակ հարսի պէս կանչեց ,
7 կ՚ըսէ քու Աստուածդ ։ ՚Փոքր
վայրկեան մը քեզ թողուցի , բայց
մեծ ողորմութիւններով քեզ պիտի
8 ընդունիմ ։ †Քիչ մը սրտմտու֊
թեամբ՝ մէկ վայրկեան մը երեսս
քեզմէ ծածկեցի , ՚բայց յաւիտե֊
նական ողորմութիւնով քեզի պի֊
տի ողորմիմ , կ՚ըսէ քու Փրկիչդ
9 Եհովան ։ Քանզի ասիկայ ինծի
՚Նոյի ջուրերուն պէս է , ինչպէս որ
երդում ըրի թէ , Նոյի ջուրերը
մէյմըն ալ երկրի վրայ չանցնին ,
այնպէս ալ երդում ըրի որ քեզի
չբարկանամ , ու քեզ չյանդիմա֊
10 նեմ ։ Քանզի ՚լեռները պիտի
վերնան , և բլուրները պիտի սա֊
սանին ․ ՚բայց իմ ողորմութիւնս
քեզմէ պիտի չվերնայ , ու իմ խա֊
ղաղութեանս ուխտը պիտի չսա֊
սանի , կ՚ըսէ Տէրը՝ որ քեզի կ՚ո֊
11 ղորմի ։ Ո՛վ փոթորիկէ զարնուած
անմխիթար ողորմելի , ահա ես քու
քարերդ ՚‡գոյնզգոյն պիտի դնեմ ,
ու քեզ շափիւղաներով պիտի
12 հիմնեմ ․ Եւ քու մարտկոցներդ
‖յասպիս քարերով՚ , ու դռներդ
կարկեհաններով , ու բոլոր §պա֊
րիսպներդ թանկագին քարերով
13 պիտի շինեմ ։ Եւ քու բոլոր որ֊
դիքդ ՚Տէրոջմէ սորված պիտի ըլ֊
լան , ու ՚քու որդւոցդ խաղաղու֊
14 թիւնը շատ պիտի ըլլայ ։ Դուն
արդարութեամբ պիտի հաստա֊
տուիս ․ բռնութենէ հեռու պիտի
ըլլաս , որ չվախնաս , ու արհաւիր֊
15 քէն՝ որ քեզի չմօտենայ ։ Ահա
անշուշտ *ժողով պիտի ընեն ,
բայց ինծմէ չէ ․ ով որ քու վրադ
ժողվուի՚ , քու կողմդ պիտի դառ֊
16 նայ ։ Ահա կրակի մէջ ածուխները
փչող՝ և իր գործքին համար գոր֊
ծիք շինող դարբինը ես ստեղ֊
ծեցի , ու աւրելու համար՝ կործա֊
17 նողը ես ստեղծեցի ։ Քեզի դէմ
շինուած գործիքը ամենևին պիտի
չյաջողի , և քու վրադ դատաստա֊
նի ելլող ամէն լեզուն պիտի դա֊
տապարտուի ․ Տէրոջը ծառանե֊
րուն ժառանգութիւնը ասիկայ է ,
՚ու անոնց արդարութիւնը ինծմէ
է , կ՚ըսէ Տէրը ։

ԳԼ․ ԾԵ

1 Մարգարէն՝ Քրիստոսի խոստմունքներովը՝ հաւատքի 6 և ապաշխարութեան կը յորդորէ ։ 8 Հաւատացեալներուն բարի յաջողութիւնը ։

1 ՚Ո՜վ ՚բոլոր ծարաւածներ՝ ջուրե֊
րուն եկէք ․ և ստակ չունեցողներ՝
՚եկէ՛ք , ծախու առէք ու կերէ՛ք ․
եկէ՛ք առանց ստակի և առանց գնոյ
2 գինի ու կաթ ծախու առէք ։ Ին֊
չո՞ւ ձեր ստակը կը վատնէք՝ չէ
թէ հացի համար , և ձեր վաստակը
անանկ բանի համար՝ որ չկշտացը֊
ներ ․ ուշադրութեամբ ինծի մտիկ
ըրէք , որ բարիքներ ուտէք , ու
ձեր հոգին պարարտութեամբ զու֊
3 արճանայ ։ Ձեր ականջը խոնար֊
հեցուցէ՛ք , ու ՚ինծի եկէք ․ մտի՛կ
ըրէք , ու ձեր հոգին պիտի ապրի ․
՚և ձեզի հետ յաւիտենական ուխտ
մը պիտի ընեմ , ՚Դաւիթին մնա֊
յուն ողորմութիւնները [illegible] տա֊
4 լով ։ Ահա զանիկայ ՚ժողովուրդ֊
ներուն վկայ ՚ազգերուն առաջնորդ
5 ու հրամանատար դրի ։ ՚Ահա չը֊

Ն․ Ք․ ԴՔ․ ԻՐՐ 712

ժ Սաղ․ ԽԴ․ 2։ Գլ․ ԾԱ․ 6։ Մատ․ Ե․ 18։ Ի Սաղ․ ՁԹ․ 33, 34։ Լ ՄՆ․ ԻԹ․ 2։ Ցայտ․ ԻԱ․ 18, 19, ‡ Կամ՝ ծարուրով ‖ Կամ՝ կարմիր յակինթներով § Եբր․ սահմաններդ Ի Գլ․ ԺԱ․ 9։ Երեմ․ ԼԱ․ 34։ Յօհ․ Զ․ 45։ ա Կոր․ Բ․ 10։ ա Թես․ Դ․ 9։ ա Յօհ․ Բ․ 20։ Ժ Սաղ․ ՃԺԹ․ 165։ * Կամ՝ ինծմէ չեղող պանդուխտներ պիտի գան ․ ո՛վ որ քու քովդ պանդխտութիւն կ՚ընէ ,

Լ Գլ․ ԽԵ․ 24, 25։

ա Յօհ․ Դ․ 14։ Է․ 37։ Ցայտ․ ԻԱ․ 6։ ԻԲ․ 17։ Բ Մատ․ ԺԳ․ 44, 46։ Ցայտ․ Գ․ 18։ Գ Մատ․ ԺԱ․ 28։ Դ Գլ․ ԾԴ․ 8։ Կա․ 8։ Երեմ․ ԼԲ․ 40։ Ի Բ Թագ․ Է․ 8, ԵՒ Սաղ․ ՁԹ․ 28։ Գործ․ ԺԳ․ 34։ Լ Յօհ․ ԺԲ․ 37։ Ցայտ․ Ա․ 5։ Ի Երեմ․ Լ․ 9։ Եզեկ․ ԼԴ․ 23։ Ովս․ Գ․ 5։ Դան․ Թ․ 25։ Ը Գլ․ ԾԲ․ 15։ Եփես․ Բ․ 11, 12։

գիտցած ազգդ պիտի կանչես , ը և
քեզ չճանչցող ազգերը քեզի պի-
տի դիմեն , քու Տէր Աստուծոյդ
համար , ու Իսրայէլի Սուրբին հա-
մար . թ քանզի անիկայ քեզ փառա-
ւորեց ։
6 ժ Տէրը փնտռեցէ՛ք , քանի որ ա-
նիկայ կը գտնուի . զանիկայ կան-
չեցէ՛ք , քանի որ անիկայ մօտ է ։
7 Թող ի ամբարիշտը իր ճամբայէն՝ ու
անօրէն մարդը լ իր խորհուրդնե-
րէն հրաժարի , և Տէրոջը դառնայ ,
խ ու անիկայ պիտի ողորմի անոր .
ու մեր Աստուծոյն , ինչու որ անի-
8 կայ առատապէս կը ներէ ։ ծ Քանզի
իմ խորհուրդներս՝ ձեր խորհուրդ-
ները չեն , ու ձեր ճամբաները՝ իմ
ճամբաներս չեն , կ'ըսէ Տէրը .
9 կ Հապա որչափ որ երկինքը երկրէս
բարձր է , այնչափ ալ իմ ճամբա-
ներս ձեր ճամբաներէն բարձր են ,
և իմ խորհուրդներս ձեր խորհուրդ-
10 ներէն ։ Վասն զի հ ինչպէս որ անձ-
րևը ու ձիւնը երկինքէն կ'իջնէ , և
հոն չդառնար , հապա երկիրը կ'ո-
ռոգէ , ու զանիկայ պտղաբեր և
արգասաւոր կ'ընէ , ու ցանողին
հունտ և ուտողին հաց կու տայ ,
11 ձ Իմ բերնէս ելած խօսքն ալ այն-
պէս պիտի ըլլայ . ինծի պարապ
պիտի չդառնայ . հապա իմ կամքս
պիտի կատարէ , ու յաջողութեամբ
'ի գործ դնէ այն բանը՝ որուն համար
12 զանիկայ խրկեցի ։ ղ Քանզի ուրա-
խութեամբ պիտի ելլէք , ու խա-
ղաղութեամբ պիտի առաջնոր-
դուիք . լեռները ու բլուրները ճ ձեր
առջևէն ցնծութեամբ պիտի աղա-
ղակեն , և մ դաշտերուն բոլոր ծա-
13 ռերը ծափ պիտի զարնեն ։ Թուփին
յ տեղը՝ մայր , ու դժնիկին տեղը՝
մրտենի պիտի բուսնի . և ասիկայ
Տէրոջը ն անուանը փառքին համար
անջինջ ու յաւիտենական նշան մը
պիտի ըլլայ ։

Ն. Ք. ԴՃ. Իբր 712

ը Գլ. Կ. 5 ։
թ Գլ. Կ. 9 ։ Գոր. Գ. 13 ։
ժ Սաղ. ԼԲ. 6 ։ Մատ. Ե. 25 ։ ԻԵ. 11 ։ Յովհ. Է. 34 ։ Ը. 21 ։ Բ Կոր. Զ. 1, 2 ։ Եբր. Գ. 13 ։
ի Գլ. Ա. 16 ։
լ Զաք. Ը. 17 ։
խ Սաղ. ՃԼ. 7 ։ Երեմ. Գ. 12 ։
ծ Բ Թագ. Է. 19 ։
կ Սաղ. ՃԳ. 11 ։
հ Բ Օր. ԼԲ. 2 ։
ձ Գլ. ԺԳ. 9 ։
ղ Գլ. ԼԵ. 10 ։ ԿԵ. 13, 14 ։
ճ Սաղ. ՂԶ. 12 ։ ՂԸ. 8 ։ Գլ. ԺԴ. 8 ։ ԼԵ. 1, 2 ։ ԽԲ. 11 ։
մ Ա Մն. ԺԶ. 33 ։
յ Գլ. ԽԱ. 19 ։
ն Երեմ. ԺԳ. 11 ։

## ԳԼ. ԾԶ

1 Մարգարէն կը յորդորէ ժողովուրդը արդարութիւն գործելու . 3 կը խոստանայ թէ Աստուծոյ շնորհքը հաւասարապէս ամենուն պիտի տրուի առանց աչառութեան . 9 կոյր պահապանները կը յանդիմանէ ։

1 Տէրը այսպէս կ'ըսէ . Իրաւունքը
պահեցէ՛ք , ու արդարութիւն
ըրէք . ա քանզի իմ փրկութիւնս
գալու , ու արդարութիւնս յայտ-
2 նուելու մօտ է ։ Երանի՛ այն մար-
դուն՝ որ ասիկայ կ'ընէ , ու մարդու
որդիին՝ որ ասիկայ ամուր կը բռնէ ,
այսինքն բ շաբաթը կը պահէ , ու
զանիկայ չպղծեր , և ամէն անի-
րաւութիւն ընելէն իր ձեռքը ետ
կը պահէ ։

ա Գլ. ԽԶ. 13 ։ Մատ. Գ. 2 ։ Դ. 17 ։ Հռով. ԺԳ. 11, 12 ։
բ Գլ. ԾԸ. 13 ։

3 Ու գ Տէրոջը յարող օտարականի
որդին թող չըսէ՝ ըսելով . Տէ-
րը զիս իր ժողովուրդէն բոլորովին
զատեց . ու ներքինին ալ թող
չըսէ՛ . ահա՛ ես չոր ծառ մըն եմ ։
4 Քանզի Տէրը այսպէս կ'ըսէ այն
ներքինիներուն , որոնք իմ շա-
բաթներս կը պահեն , և ինծի հա-
ճոյ եղածը կ'ընտրեն , ու իմ ուխ-
5 տիս մէջ հաստատ կը կենան , Ա-
նոնց՝ դ իմ տանս մէջ և պարիսպ-
ներուս մէջ՝ տղաքներէ ու աղջիկ-
ներէ աւելի աղէկ տեղ ու ե անուն
պիտի տամ . անոնց յաւիտենական
անուն պիտի տամ , որ պիտի չը-
6 պակսի ։ Եւ այն օտարականի որ-
դիքը որ Տէրոջը յարեր են՝ անոր
ծառայութիւն ընելու , Տէրոջը ա-
նունը սիրելու , ու անոր ծառաներ
ըլլալու համար , այսինքն ամէն ա-
նոնք որ շաբաթը կը պահեն ու չեն
պղծեր , և իմ ուխտիս մէջ հաստատ
7 կը կենան , Զանոնք ալ զ իմ սուրբ
լեռս պիտի բերեմ , և իմ աղօթքի
տանս մէջ զանոնք պիտի ուրախա-
ցընեմ . է անոնց ողջակէզները ու
զոհերը իմ սեղանիս վրայ ընդու-
նելի պիտի ըլլան . քանզի ը իմ
տունս թ բոլոր ազգերուն համար՝
աղօթքի տուն պիտի կոչուի ։
8 Այսպէս կ'ըսէ Տէր Եհովան , ժ որ
Իսրայէլին աքսորուածները կը ժող-
վէ . անոր ժողվուածներուն վրայ
ի ուրիշներ ալ պիտի ժողվեմ անոր ։
9 լ Ո՛վ դաշտի բոլոր գազաններ ,
ո՛վ անտառի բոլոր գազաններ՝ ու-
10 տելու եկէք ։ Անոր բոլոր պահա-
պանները խ կոյր են . բան մը չեն
գիտեր . ծ ամէնքն ալ համր շու-
ներ են , հաջելու կարող չեն . ա-
նոնք *կը ցնորին , կը պառկին ,
11 քունը կը սիրեն . Այո՛ կ շատա-
կեր ու հ անյագ շուներ են . ու ա-
նոնք իմացողութենէ զուրկ հովիւ-
ներ են . ամէնքը իրենց ճամբանե-
րուն դարձան՝ ամէն մէկը իր կողմէն
իր անիրաւ վաստակը փնտռելով .
12 ձ ըսեն . Եկէ՛ք , գինի բերեմ ,
ու օղիով արբենանք . Ու վաղն ալ
աս օրուան պէս , ու ալ աւելի ա-
ռատ պիտի ըլլայ ։

Ն. Ք. ԴՃ. Իբր 712

գ Տես Բ Օր. ԻԳ. 1, 2, 3 ։ Գոր. Ը. 27 ։ Ժ. 1, 2, 34 ։ ԺԷ. 4 ։ ԺԸ. 7 ։ Ա Պետ. Ա. 1 ։
դ Ա Տիմ. Գ. 15 ։
ե Յովհ. Ա. 12 ։ Ա Յովհ. Գ. 1 ։
զ Գլ. Բ. 2 ։
է Հռով. ԺԲ. 1 ։ Եբր. ԺԳ. 15 ։ Ա Պետ. Բ. 5 ։
ը Մատ. ԻԱ. 13 ։ Մար. ԺԱ. 17 ։ Ղուկ. ԺԹ. 46 ։
թ Մաղ. Ա. 11 ։
ժ Սաղ. ՃԽԷ. 2 ։ Գլ. ԺԱ. 12 ։
ի Յովհ. Ժ. 16 ։ Եփե. Ա. 10 ։ Բ. 14, 15, 16 ։
լ Երեմ. ԺԲ. 9 ։
խ Մատ. ԺԵ. 14 ։ ԻԳ. 16 ։
ծ Փիլ. Գ. 2 ։
* Կամ՝ կը նիրհեն ,
կ Միք. Գ. 11 ։
հ Եզեկ. ԼԴ. 2, 3 ։
ձ Սաղ. Ժ. 6 ։ Առակ. ԻԳ. 35 ։ Գլ. ԻԲ. 13 ։ Ղուկ. ԺԲ. 19 ։ Ա Կոր. ԺԵ. 32 ։

## ԳԼ. ԾԷ

1 Արդարին բարի մահը ։ 3 Աստուած կը յանդիմանէ Հրէաները իրենց կռապաշտական պոռնկութեանը համար . 13 ապաշխարողին՝ աւետարանական խոստումներ կու տայ ։

1 Արդարը կը կորսուի , և ուշա-
դրութիւն ընող մարդ չկայ .
ու ա բարի մարդիկը ողորմածները կը
վերցուին , բ առանց մէկու մը իմա-
նալուն՝ թէ արդարը չարիքին երե-

Իբր 698

ա Սաղ. ԺԲ. 1 ։ Միք. Է. 2 ։
բ Գ Թագ. ԺԴ. 13 ։ Տես Դ Թագ. ԻԲ. 20 ։

Ն. Բ. ԴԲ. Իրր 698
* Բ Մն. ԺԶ. 14։
† Մատթ. ԺԶ. 4։
‡ Դ Թագ. ԺԶ. 4։ ԺԷ. 10։ Երեմ. Բ. 20։
* Կամ՝ Բևեկնիներուն մէջ. Գլ. Ա. 29։
† Ղև. ԺԸ. 21։ Ի. 2։ Դ Թագ. ԺԳ. 3։ Իգ. 10։ Երեմ. Է. 31։ Եզեկ. ԺԶ. 20։ Ի. 26։
‡ Եզեկ. Իգ. 41։
§ Եզեկ. ԺԶ. 16, 25։
Բ Եզեկ. ԺԶ. 26, 28։ Իգ. 2-20։
* Գլ. Լ. 6։ Եզեկ. ԺԶ. 33։ Իգ. 16։ Ովսէ. Է. 11։ ԺԲ. 1։
† Երեմ. Բ. 25։
‡ Գլ. Ծա. 12, 13։
* Սաղ. Ծ. 21։
* Գլ. Խ. 3։ Կբ. 10։
† Յոբ. Զ. 10։ Ղուկ. Ա. 49։

2 սէն կը վերցուի ։ Անիկա խաղա-
ղութեան մէջ կը մտնէ . ուղղու-
թեամբ քալողները *իրենց անկո-
ղիններուն վրայ հանգստութիւն կը
3 գտնեն ։ Բայց դուք մօտ † վհուկի
որդիք , շնացողի ու պոռնիկի սե-
4 րունդ՝ հոս մօտեցէք . Դուք ո՞վ
ծաղր կ'ընէք . ձեր բերանը որու
վրայ կը լայնցընէք , ու լեզունիդ
կ'երկընցընէք . չէ՞ որ դուք անօ-
րէնութեան զաւակներ՝ ու ստու-
5 թեան սերունդ էք ։ Դուք ‡ամէն
կանանչ ծառերու տակ՝ *դէպ 'ի
կուռքերուն" ցանկութեամբ կը
տաքնաք . Տղաքները ձորերու
մէջ՝ վէմերու խոռոչներուն մէջը կը
6 մորթէք ։ Քու բաժինդ ձորին սա-
հուն քարերուն մէջն է . քու վիճակդ
անոնք են՝ անոնք . անոնց անգամ
նուէր թափեցիր , ընծայ մատու-
ցիր . միթէ ես ասոնց կրնամ
7 համբերել ։ Դուն †քու անկողինդ
‡բարձր ու վերացած լերան վրայ
դրիր . հոն ալ զոհ ընելու ելար ։
8 Եւ դռներուն ու դրանդիներուն ե-
տեւը քու յիշատակդ դրիր . քանզի
ինծմէ զատուելով քու անձդ մերկացու-
ցիր , ու վեր ելլելով անկողինդ
լայնցուցիր . և անոնց հետ դաշ-
նադրութիւն ըրիր . Բանոնց անկո-
ղինը սիրեցիր , ու անոր համար տեղ
9 պատրաստեցիր ։ Եւ *թագաւո-
րին քովը հոտաւէտ եղով գացիր ,
ու անուշահոտութիւններդ շատ-
ցուցիր , և դեսպաններդ հեռա-
ւոր տեղուանք խրկեցիր , ու ինք-
զինքդ մինչև դժոխքը իջեցուցիր ։
10 Քու ճամբուդ երկայնութենէն
յոգնեցար . †Բայց Յոյս չկայ՝ չը-
սիր . քու ձեռքիդ կեանքը գտար .
11 անոր համար չթուլցար ։ Եւ դուն
‡որմէ՞ զարհուրեցար ու վախցար ,
որ ստախօս ելար , և զիս չյիշեցիր ,
ու սիրտդ չդրիր . *չէ՞ որ իմ շա-
տոնցմէ լուռ կենալուս համար
12 է որ ինծմէ չես վախնար ։ Ես
քու արդարութիւնդ ու գործ-
քերդ պիտի հրատարակեմ , որ
անոնք քեզի օգուտ պիտի չը-
13 նեն ։ Երբոր դուն աղաղակես ,
թող քու ժողվածներդ քեզ փըր-
կեն . բայց ամէնը հովը պիտի տա-
նի . մէկ շունչ մը զանոնք պիտի
առնէ . սակայն ինծի յուսացողները
երկիրը իրբև կալուածք պիտի առա-
նան , ու իմ սուրբ լեռս պիտի ժա-
14 ռանգեն . Եւ պիտի ըսեն . *Բարձ-
րացուցէք , բարձրացուցէք . ճամ-
բայ պատրաստեցէք , խոչ իմ ժո-
ղովուրդիս ճամբայէն վերցուցէք ։
15 Քանզի այսպէս կ'ըսէ Բարձրը ու
Բարձրեալը՝ որ յաւիտենականու-
թեան մէջ կը բնակի , †ու անոր
անունը Սուրբ է . *Ես բարձր ու
սուրբ տեղը կը բնակիմ . †բայց
կոտրած ու խոնարհ հոգի ունեցո-
ղին հետ եմ , ‡որ խոնարհներուն
հոգին կենդանացընեմ , և կոտրած
16 սիրտերը ապրեցընեմ ։ §Քանզի
յաւիտեան պիտի չվիճիմ , ու միշտ
պիտի չբարկանամ . վասն զի իմ
առջևս հոգիները պիտի մարէին , և
ան կեանքերը՝ †որ ես ստեղծեցի ։
17 *Անոր ագահութեանը անօրէնու-
թեանը համար բարկացայ , ու զա-
նիկայ զարկի , *իմ երեսս ծածկեցի ,
ու սրդողեցայ . †և ապստամբը իր
18 կամացը ճամբուն հետևեցաւ ։ Ա-
նոր ճամբաները տեսայ , ու *զա-
նիկայ պիտի բժշկեմ , և անոր ա-
ռաջնորդութիւն պիտի ընեմ , ու
զանիկայ ու †անոր սգաւորները
19 պիտի մխիթարեմ ։ ‡Շրթունք-
ներուն պտուղը ես կը ստեղծեմ .
խաղաղութիւն՝ խաղաղութիւն
ըլլայ §հեռուն եղողին , և մօտը
եղողին՝ կ'ըսէ Տէրը . ու ես զանի-
20 կայ պիտի բժշկեմ ։ *Բայց ամ-
բարիշտները ալեծուփ ծովու պէս
են , որ չկրնար հանդարտիլ , որ
անոր ջուրերը տիղմ ու ցեխ դուրս
21 կը նետեն ։ *Ամբարիշտները խա-
ղաղութիւն պիտի չունենան , կ'ը-
սէ իմ Աստուածս ։

## ԳԼ. ԾԸ

1 Մարգարէն կեղծաւորութիւնը յանդիմանելու խրկուած ըլլալով , 3 կեղծեալ ու ճշմարիտ ծոմապահութիւն մը կը նկարագրէ . 8 կը ցուցընէ թէ ինչ խոստումներ կը տրուին աստուածապաշտներուն , 13 և շաբաթը պահողներուն ։

1 †Բարձրաձայն կանչէ , ու մի՛ խնա-
յեր , ձայնդ փողի պէս բարձ-
րացուր . և իմ ժողովուրդիս՝ իրենց
յանցանքը , ու Յակոբին տանը՝
2 իրենց մեղքերը պատմէ ։ Բայց
անոնք ամէն օր զիս կը փնտռեն .
և իմ ճամբաներս գիտնալու կը
փափաքին , անանկ ազգի մը պէս՝
որ արդարութիւն կ'ընէ , ու իր
Աստուծոյն իրաւունքը զանց չըներ .
ինծի արդարութեան կանոնները կը
հարցընեն . Աստուծոյ մօտենալու
3 կը փափաքին . Ու կ'ըսեն . *Մենք
ինչո՞ւ ծոմ պահեցինք , և դուն
չտեսար , †մեր անձերը չարչարե-
ցինք , ու դուն չգիտցար . ահա՛ ձեր
ծոմապահութեան օրը ձեր բաղ-
ձանքը կը կատարէք , և ձեր ամէն
‡պահանջմունքները խստութեամբ
4 կը պահանջէք" ։ *Ահա՛ կռիւի ու
վէճի համար՝ և չարութեան բռուն-
ցով զարնելու համար ծոմ կը պա-
հէք . աս օրուան պէս ծոմ մի՛ պա-
հէք , որ ձեր ձայնը բարձրերը լսել

Ն. Բ. ԴԲ. Իրր 698
* Զաք. Բ. 13։
† Սաղ. ԼԴ. 18։ ԾԱ. 17։ ՃԼԸ. 6։ Գլ. ԿԶ. 2։
‡ Սաղ. ՃԽԷ. 3։ Գլ. ԿԱ. 1։
§ Սաղ. ՁԵ. 5։ ՃԳ. 9։ Միք. Է. 18։
† Թուոց ԺԶ. 22։ Յոբ. ԼԴ. 14։ Եբր. ԺԲ. 9։
* Երեմ. Զ. 13։
* Գլ. Բ. 17։ ԽԵ. 15։
† Գլ. Թ. 13։
* Երեմ. Գ. 22։
† Գլ. ԿԱ. 2։
‡ Եբր. ԺԳ. 15։
§ Գործ. Բ. 39։ Եփես. Բ. 17։
* Յոբ. ԺԵ. 20։ Առակ. Դ. 16։
* Գլ. ԽԸ. 22։
† Եբր. Կոկորդով։
* Մաղ. Գ. 14։
† Ղև. ԺԶ. 29, 31։ ԻԳ. 27։
‡ Կամ՝ ծառաները կը հարստահարէք։
* Գ Թագ. ԻԱ. 9, 12, 13։

5 տաք ։ ա Իմ ընտրած ծոմապահու-
թիւնս, բ մարդու մը իր անձը
խոնարհեցընելու օրը այսպէս կ'ըլ-
լայ․ իր գլուխը կնիւնի պէս ծռե-
լով, եւ գ իր տակը քուրձ ու մոխիր
տարածելո՞վ կ'ըլլայ․ ասիկայ ծո-
մապահութիւն ու Տէրոջը ընդու-
6 նելի օ՞ր պիտի անուանես ։ Ահա
աս է իմ ընտրած ծոմապահութիւ-
նըս, որ անիրաւութեան կապերը
քակես, եւ դ լուծին կապերը թու-
ցընես, ու ե հարստահարութիւն
կրողները ազատ թողուս, եւ ամէն
7 լուծը կոտրես, զ Քու հացդ անօ-
թիին բաժնես, եւ թափառական
տնանկները տունդ ընդունիս, է մեր-
կը մերկ մը տեսնես՝ զանիկայ հա-
գուեցընես, ու ը քու մարմինէդ քեզ
8 չպահես ։ թ Այն ատենը քու լոյսդ ա-
ռաւօտի պէս պիտի ծագի, ու բը-
ժըշկութիւնդ շուտով պիտի *յայտ-
նուի, եւ քու արդարութիւնդ քու
առջեւէդ պիտի երթայ, ու ժ Տէ-
րոջը փառքը քու ետեւէդ քեզ պի-
9 տի պաշտպանէ ։ Այն ատենը պիտի
կանչես, եւ Տէրը պատասխան պի-
տի տայ․ պիտի աղաղակես, ու
անիկայ պիտի ըսէ՝ Ահա եմ ։ Թէ
որ քու մէջէդ լուծը, մատով ցու-
ցընելը, ու ի չար խօսքերը վերցը-
10 նես․ թէ որ † անօթիին յօժարու-
թեամբ կերակրես", եւ կարօտին հո-
գին կշտացընես․ այն ատենը քու
լոյսդ խաւարի մէջ պիտի ծագի,
ու քու խաւարդ կէս օրուան պէս
11 պիտի ըլլայ․ Եւ Տէրը միշտ քեզի
առաջնորդութիւն պիտի ընէ, ու
քու հոգիդ՝ ‡ երաշտութեան ա-
տենը" պիտի կշտացընէ, եւ ոսկոր-
ներդ պիտի զօրացընէ․ ու դուն՝
ջրարբի պարտէզի պէս, եւ ջուրը
չպակսող աղբերակի պէս պիտի ըլ-
12 լաս ։ Ու քեզմէ ծնածները՝ լ հին
աւերակները պիտի շինեն․ ազգէ
դարերուն հիմերը պիտի վերա-
կանգնես․ եւ դուն՝ փլածներ նորո-
գող, ու բնակութեան համար
ճամբաներ շինող պիտի կոչուիս ։
13 Թէ որ խ շաբաթը՝ իմ սուրբ օրս՝
քու ցանկութիւնդ կատարելէն
ոտքդ դարձընես, ու շաբաթը՝
զուարճութիւնդ․ եւ Տէրոջը նուի-
րուած օրը՝ պատուական անուա-
նես, ու զանիկայ պատուես, քու
ճամբաներուդ չհետեւելով, քու
ցանկութիւնդ չկատարելով, ու
14 պարապ խօսք չխօսելով, ծ Այն ա-
տենը Տէրոջմով պիտի ուրախանաս․
եւ կ քեզ երկրիս բարձր տեղուանքը
պիտի հանեմ, ու քու հօրդ Յա-
կոբին ժառանգութիւնը քեզի պի-
տի կերցընեմ․ հ քանզի Տէրոջը
բերանը խօսեցաւ ։

Ն․ Ք․ ՉՖ․ իբր 698

ա Զաք․ է․ 5 ։
բ Ղեւ․ ժզ․ 29 ։
գ Եսթ․ դ․ 3 ։ Յոբ․ բ․ 8 ։ Դան․ թ․ 3 ։ Յովն․ գ․ 6 ։
դ Նեեմ․ ե․ 10, 11, 12 ։
ե Երեմ․ լդ․ 9 ։
զ Եզեկ․ ժը․ 7, 16 ։ Մատ․ իե․ 35 ։
է Յոբ․ լա․ 19 ։
ը Ծն․ իթ․ 14 ։ Նեեմ․ ե․ 5 ։
թ Յոբ․ ժա․ 17 ։
* Եբր․ բուսնի,
ժ Ել․ ժդ․ 19 ։ Գլ․ ծբ․ 12 ։
ի Սաղ․ ժբ․ 2 ։
† Եբր․ քու հոգիդ անօթիին ընծայես,
‡ Կամ՝ անջուր տեղերու մէջ
լ Գլ․ կա․ 4 ։
խ Գլ․ ծզ․ 2 ։
ծ Յոբ․ իբ․ 26 ։
կ Բ Օր․ լբ․ 13 ։ Լգ․ 29 ։
հ Գլ․ ա․ 20 ։ խ․ 5 ։ Միք․ դ․ 4 ։

## ԳԼ․ ԾԹ

1 Մեղքը դատապարտութեան պատճառ կ'ըլլայ ։ 3 Հրէից մեղքերը ։ 9 Թշուառութիւնը մեղքին հետեւանքն է ։ 16 Փրկութիւնը միայն Աստուծմէ է ։ 20 Փրկչին ուխտը ։

1 Ահա Տէրոջը ձեռքը ա փրկելէն չը-
կարճցաւ, ու անոր ականջը
2 լսելէն չծանրացաւ ։ Հապա ձեր՝
ու ձեր Աստուծոյն մէջտեղը բաժա-
նում ձգողը՝ ձեր անօրէնութիւն-
ները եղան, եւ ձեր մեղքերը անոր
երեսը ձեզմէ ծածկեցին, որ չլսէ ։
3 Քանզի բ ձեր ձեռքերը արիւնով՝
ու ձեր մատերը անօրէնութիւնով
պղծուեցան․ ձեր շրթունքը սուտ
խօսեցան, եւ ձեր լեզուները անի-
4 րաւութիւն արտաբերեցին ։ Չկայ
մէկը՝ որ արդարութեան համար
բողոքէ, ու չկայ մէկը՝ որ ճշմար-
տութեամբ դատ վարէ․ անոնք
սնոտի բաներու կը յուսան, ու ու-
նայնութիւն կը խօսին․ գ Թշուա-
ռութիւն կը յղանան, ու անօրէ-
5 նութիւն կը ծնանին․ Քարբի
հաւկիթներ կը տաքցընեն, ու
սարդի ոստայն կը գործեն․ անոնց
հաւկիթները ուտողը կը մեռնի,
6 ու բացուածէն իժ կ'ելլէ ։ դ Անոնց
ոստայններէն հանդերձ չըլլար, եւ
իրենց գործքերովը չեն կրնար զի-
րենք ծածկել․ անոնց գործքերը
անօրէնութեան գործքեր են, ու
անոնց ձեռացը մէջ բռնութեան
7 գործ կայ ։ ե Անոնց ոտքերը չարու-
թեան կը վազեն, ու անմեղ արիւն
թափելու կ'արտորան․ անոնց խոր-
հուրդները անօրէնութեան խոր-
հուրդներ են․ անոնց ճամբաներուն
մէջը՝ կործանում ու կոտորած կայ ։
8 Խաղաղութեան ճամբան չեն գի-
տեր․ եւ անոնց ընթացքին մէջ
արդարութիւն չկայ․ զ Իրենց շա-
ւիղները խոտորեցուցին․ անոնց մէ-
ջը քալողներուն ամէնը՝ խաղաղու-
9 թիւն չեն գիտեր ։ Անոր համար
իրաւունքը մեզմէ հեռացաւ, ու
արդարութիւնը մեզի չհասնիր․
է լոյսի կը սպասենք, եւ ահա խա-
ւար կայ․ պայծառութեան կը
սպասենք, եւ ահա մառախուղի մէջ
10 կը շրջինք ։ ը Կոյրերուն պէս պա-
տերը կը շօշափենք, ու աչք չունե-
ցողներուն պէս կը խարխափենք․
կէս օրը՝ գիշերուան պէս կը գլո-
րինք․ ‖ պտղաբեր տեղերու մէջ"
11 մեռելներու պէս ենք ։ Ամենքս
արջերու պէս կը մռնչենք, ու թ ա-
ղաւնիներու պէս անդադար կը
մնչենք․ դատաստանի կը սպասենք,
բայց չկայ․ փրկութեան համար կը
սպասենք, բայց անիկա մեզմէ հեռա-
12 ցած է ։ Քանզի մեր յանցանքնե-
րը քու առջեւդ շատցան, ու մեր

Ն․ Ք․ ՉՖ․ իբր 698

ա Թուոց․ ժա․ 23 ։ Գլ․ ծ․ 2 ։
բ Գլ․ ա․ 15 ։
գ Յոբ․ ժե․ 35 ։ Սաղ․ է․ 14 ։
դ Յոբ․ ը․ 14, 15 ։
ե Առակ․ ա․ 16 ։ Հռով․ գ․ 15 ։
զ Սաղ․ ճծե․ 5 ։ Առակ․ բ․ 15 ։
է Երեմ․ ը․ 15 ։
ը Բ Օր․ իը․ 29 ։ Յոբ․ ե․ 14 ։ Ամով․ ը․ 9 ։
‖ Կամ՝ պարարտներուն մէջ, եւ կամ՝ թանձր խաւարին մէջ
թ Գլ․ լը․ 14 ։ Եզեկ․ է․ 16 ։

Ն . ք . ղք . իբր 698
ժ Մատ . ժբ . 34 ։
է Եզեկ . իբ . 30 ։
Լ Մար . զ . 6 ։
Ի Սաղ . ղը . 1 ։ Գլ . կէ . 5 ։
Թ Եփե . զ . 14 ։ 17 ։ Ա Թես . ե . 8 ։
* Կամ՝ հեռաւոր երկիրներուն
Սաղ . ճժգ . 3 ։ Մաղ . ա . 11 ։
Յայտ . ժբ . 15 ։
† Կամ՝ զանիկայ պիտի հալածէ ։
Հռով . ժա . 26 ։
Եբր . ը . 10 ։ ժ . 16 ։

մեղքերը մեզի դէմ վկայութիւն
կու տան . ինչու որ մեր յանցանք-
ները մեր քովն են , ու մեր ան-
13 օրէնութիւնները գիտենք ։ Յան-
ցանք ըրինք , Տէրը ուրացանք , և
մեր Աստուծոյն հետեւելէն խոտորե-
ցանք . անիրաւութիւն ու ապըս-
տամբութիւն խօսեցանք . Մեր
սրտին մէջը սուտ խօսքեր մտածե-
14 ցինք ու զրուցեցինք ։ Եւ դատաս-
տանը ետ դարձաւ , ու արդարու-
թիւնը հեռուն կայնեցաւ . քանզի
ճշմարտութիւնը հրապարակին մէ-
ջը ինկաւ , և ուղղութիւնը չկրնար
15 ներս մտնել ։ Ու ճշմարտութիւնը
կը պակսի , և չարութենէ զգուշա-
ցողը կը կողոպտուի . ու Տէրը տե-
սաւ , և ասիկայ անոր առջեւը գէշ
երեւցաւ . քանզի իրաւունք չմնաց ։
16 Ու տեսաւ որ մարդ մը չկար , և
զարմացաւ որ միջնորդ մը չէր
գտնուէր . ուստի իր բազուկը
իրեն օգնեց , ու իր արդարութիւնը
17 իրեն ձեռնտու եղաւ ։ Եւ ար-
դարութիւնը զրահի պէս՝ ու փըր-
կութիւնը իր գլուխը սաղաւարտի
պէս հագաւ , և վրէժխնդրութեան
զգեստը՝ պատմուճանի պէս հա-
գաւ , ու նախանձը վերարկուի պէս
18 իր վրան առաւ ։ Իրենց վարմունք-
քին համեմատ հատուցում պիտի
ընէ . բարկութիւն՝ իր հակառա-
կորդներուն , հատուցում՝ իր թըշ-
նամիներուն . *կղզիներուն հատու-
19 ցում պիտի ընէ ։ Ու արեւմուտ-
քը՝ Տէրոջը անունէն , և արեւելքը
անոր փառքէն պիտի վախնան .
երբոր թշնամին գետի պէս գայ ,
Տէրոջը Հոգին †անոր դէմ դրօշակ
20 պիտի կանգնէ" ։ Ու Փրկիչ պիտի
գայ Սիօնին , ու Յակոբի մէջ չա-
րութենէ դարձողներուն , կ'ըսէ
21 Տէրը ։ Եւ անոնց հետ ըրած
ուխտս ասիկայ է՝ կ'ըսէ Տէրը . Իմ
Հոգիս՝ որ քու վրադ է , ու իմ
խօսքերս՝ որ քու բերանդ դրած
եմ , քու բերնէդ , ու քու զա-
ւակներուդ բերնէն , և քու զա-
ւակացդ զաւակներուն բերնէն՝
հիմակուընէ մինչև յաւիտեան պի-
տի չպակսին , կ'ըսէ Տէրը ։

## ԳԼ . Կ

1 Եկեղեցիին փառքը՝ հեթանոսներուն դարձի գալովը . 15 և մեծ օրհնութիւնները՝ [illegible] նեղութենէ մը ետքը ։

Եփե . ե . 14 ։
Մաղ . դ . 2 ։

1 Ելի՛ր լուսաւորուէ . քանզի քու
լոյսդ եկաւ , ու Տէրոջը փառքը
2 քու վրադ ծագեցաւ ։ Վասն զի
ահա երկիրը՝ խաւար , ու ազգերը՝
մառախուղ պիտի ծածկէ . բայց
քու վրադ Տէրը պիտի ծագի . և
անոր փառքը քու վրադ պիտի ե-
3 րեւնայ ։ Ու քու լոյսիդ ազգեր
պիտի գան , և քու վրադ ծագած
պայծառութեանը՝ թագաւորներ ։
4 Աչքերդ վերցուր , ու բոլորտիքդ
նայէ . ամէնքը կը ժողվուին , ու
քեզի կու գան . քու տղաքներդ
հեռուէն պիտի գան , և քու աղ-
ջիկներդ գիրկի մէջ պիտի վեր-
5 ցուին ։ Ան ատենը պիտի տեսնես
և ուրախանաս , ու սիրտդ պիտի
շարժի ու բացուի . քանզի ծովուն
առատութիւնը քեզի պիտի դառ-
նայ . ազգաց հարստութիւնը քեզի
6 պիտի գայ ։ Քեզ ուղտերուն ե-
րամակը՝ Մադիամու ու Գեփայի
տաճիկ ուղտերը պիտի ծածկեն .
ամէնը Սաբայէն պիտի գան , ոսկի
ու կնդրուկ պիտի բերեն , և
Տէրոջը գովութիւնները պիտի ա-
7 ւետեն ։ Կեդարին բոլոր հօտերը
քու քովդ պիտի ժողվուին , ու
Նաբէօթին խոյերը քեզի պիտի
ծառայեն . անոնք իմ սեղանիս
վրայ պիտի ելլեն՝ ընդունելի ըլլա-
լով . և իմ փառացս տունը
պիտի փառաւորեմ ։
8 Ո՞վ են ասոնք , որ կը թռչին
ամպի պէս , ու դէպ 'ի իրենց վան-
դակը բոլոր աղաւնիներու պէս ։
9 Քանզի կղզիները՝ ու նախ Թար-
սիսի նաւերը ինծի համար պատ-
րաստ պիտի ըլլան , որ հեռուէն
քու տղաքներդ , և անոնց հետ
անոնց արծաթը ու ոսկին բերեն ,
քու Տէր Աստուծոյդ անուանը
համար , ու Իսրայէլի Սուրբին
համար . քանզի անիկայ քեզ կը
10 փառաւորէ ։ Եւ օտարաց որ-
դիքը քու պարիսպներդ պիտի շի-
նեն , ու անոնց թագաւորները
քեզի ծառայութիւն պիտի ընեն .
քանզի իմ բարկութեամբս քեզ
զարկի , բայց բարեհաճութեամբս
11 քեզի պիտի ողորմիմ ։ Եւ քու
դռներդ միշտ բաց պիտի ըլլան ,
ցորեկ ու գիշեր պիտի չգոցուին ,
որ քեզի ազգերուն ստացուածքը
կրեն , և անոնց թագաւորները
12 ‡բերուին ։ Քանզի քեզի ծառա-
յութիւն չընող ազգը ու թա-
գաւորութիւնը պիտի կորսուի , ու
ազգերը բոլորովին պիտի կործա-
13 նին ։ Լիբանանին փառքը քեզի
պիտի գայ , մայրը , սօսին ու տօ-
սախը մէկտեղ , իմ սրբարանիս
տեղը զարդարելու համար , և իմ
ոտքերուս տեղը պիտի փառաւո-
14 րեմ ։ Ու քեզի նեղութիւն
տուողներուն տղաքները ծռելով
քեզի պիտի գան , և քեզ անար-
գողներուն ամէնը քու ոտքերուդ
գարշապարներուն երկրպագու-
թիւն պիտի ընեն . ու քեզ՝ Տէրո-

Ն . ք . ղք . իբր 698
Գլ . խթ . 6 ։ 23 ։ Յայտ . իա . 24 ։
Գլ . խթ . 18 ։
Գլ . խթ . 20 ։ 21 ։ 22 ։ կզ . 12 ։
Ծն . իե . 4 ։
Սաղ . հբ . 10 ։
Գլ . կա . 6 ։ Մատ . բ . 11 ։
Ծն . իե . 13 ։
Անգ . բ . 7 ։ 9 ։
Սաղ . հբ . 10 ։ Գլ . խբ . 4 ։ ծա . 5 ։
Գաղ . դ . 26 ։
Սաղ . կը . 30 ։ Զաք . ժդ . 14 ։
Երեմ . դ . 17 ։
Գլ . ծե . 5 ։
Զաք . զ . 15 ։
Գլ . խթ . 23 ։ Յայտ . իա . 24 ։
Գլ . ծէ . 17 ։
Գլ . ծդ . 7 ։ 8 ։
Յայտ . իա . 25 ։
‡ Կամ՝ հանդեսով գան ։
Զաք . ժդ . 17 ։ 19 ։ Մատ . իա . 44 ։
Գլ . լե . 2 ։ խա . 19 ։
Տես Ա Մն . իը . 2 ։ Սաղ . ճլբ . 7 ։
Գլ . խթ . 23 ։ Յայտ . գ . 9 ։

Ն. Ք. Դ.Ք. Իրր 698

ջը քաղաքը, Իսրայէլի Սուրբին
15 Սիօնը պիտի անուանեն ։ Դուն
որ երեսէ ձգուած ու ատելի եղար,
և մէջէդ անցնող չեղաւ, քեզ յա-
ւիտենական փառք՝ ու ազգէ ազգ
ուրախութիւն պիտի ընեմ ։
16 Եւ ազգերուն կաթը պիտի ծծես,
Ու թագաւորներուն ստինքը պի-
տի ծծես. և պիտի գիտնաս որ
Ես Տէրս եմ քու Ազատիչդ, ու
քու Փրկիչդ՝ Յակոբին Հզօրը ։
17 Պղինձի տեղ՝ ոսկի պիտի բերեմ,
ու երկաթի տեղ՝ արծաթ, և փայ-
տերու տեղ՝ պղինձ, ու քարերու
տեղ՝ երկաթ պիտի բերեմ. և քու
վերակացուներդ խաղաղութիւն
ընող, ու քու իշխաններդ արդա-
րութիւն գործող պիտի ընեմ ։
18 Մէյմըն ալ քու երկրիդ մէջը բռը-
նութիւն, և քու սահմաններուդ
մէջը յափշտակութիւն ու կոտո-
րած պիտի չլսուի. հապա քու
պարիսպներդ՝ Փրկութիւն, ու
դռներդ՝ Գովութիւն պիտի ա-
19 նուանես ։ Մէյմըն ալ ցորեկը
քու լոյսդ արեը պիտի չըլլայ, ու
լուսինը իր պայծառու-
թեամբը քեզի լոյս պիտի չտայ.
հապա Եհովան քեզի յաւիտենա-
կան լոյս՝ և քու Աստուածդ
20 քու փառքդ պիտի ըլլայ ։ Քու
արեդ մէյմըն ալ պիտի չմտնէ, ու
քու լուսինդ պիտի չնուազի. հա-
պա Եհովան քեզի յաւիտենական
լոյս պիտի ըլլայ, և սուգի օրերդ
21 պիտի վերջանայ ։ Ու քու ժողո-
վուրդիդ ամէնը արդար պիտի ըլ-
լան, երկիրը յաւիտեան պիտի
ժառանգեն. իմ տնկած տունկս
է իմ ձեռքերուս գործքը՝ իմ փառ-
22 քիս համար պիտի ըլլայ ։ Պզտիկը
հազարաւոր, ու քիչաւորը մեծ ազգ
պիտի ըլլայ. ես Տէրս շուտով պի-
տի կատարեմ ասիկայ իր ժամա-
նակին ։

## ԳԼ. ԿԱ

1 Քրիստոսի պաշտօնը ։ 4 Հաւատացեալներուն յաջողութիւնը, 7 ու օրհնութիւնները ։

1 Տէր Եհովային Հոգին իմ վրաս
է. վասն զի Տէրը զիս օծեց,
զիս խրկեց աղքատներուն աւե-
տիս տալու, կոտրած սիրտ ունե-
ցողները բժշկելու, գերիներուն
ազատութիւն՝ և բանտարկելոց՝
բանտին բացուիլը հրատարակելու.
2 Տէրոջը ընդունելի տարին, ու
մեր Աստուծոյն վրէժխնդրու-
թեան օրը հրատարակելու, ամէն
3 սգաւորները մխիթարելու, Սիօնի
սգաւորներուն որոշելու, անոնց՝ մոխիրի տեղ՝ փառք, սուգի
տեղ՝ ուրախութեան իւղ, կոտրած
հոգիի տեղ՝ գովութեան պատմու-
ճան տալու. և պիտի անուանեն
զանոնք՝ Արդարութեան բևեկնի-
ներ, որ Տէրը տնկեր է իր փառ-
4 քին համար ։ Եւ հին աւերակները
պիտի շինեն, առջի կործա-
նուածները պիտի կանգնեն, և աւ-
րուած քաղաքները, ու շատ դա-
րերէն 'ի վեր աւերակ մնացածները
5 պիտի նորոգեն ։ Եւ օտարական-
ները պիտի ելլեն, ու ձեր հօտերը
պիտի հովուեն. ու օտարաց որ-
դիքը՝ ձեր երկրագործները և այ-
6 գեգործները պիտի ըլլան ։ Բայց
դուք Տէրոջը քահանաները պիտի
կոչուիք. մեր Աստուծոյն պաշտօ-
նեաները պիտի ըսուիք. ազգաց
հարստութիւնը պիտի ուտէք, ու
անոնց փառքովը պիտի փառաւո-
7 րուիք ։ Ձեր ամօթին տեղը՝ կը-
կին պատիւ, և անարգանաց
տեղ՝ իրենց ժառանգութեանը մէջ
պիտի ցնծան. ուստի իրենց երկրին
մէջը կրկին ժառանգութիւն պիտի
առնեն. անոնք յաւիտենական ու-
8 րախութիւն պիտի ունենան ։ Քան-
զի ես Տէրս արդարութիւնը կը
սիրեմ, անիրաւութիւնը ու յա-
փշտակութիւնը կ'ատեմ. իրաւ-
ցընէ անոնց գործքերուն վարձքը
պիտի տամ, ու անոնց հետ յա-
9 ւիտենական ուխտ պիտի ընեմ ։ Եւ
անոնց սերունդը ազգերուն մէջ՝ ու
անոնց տղաքները ժողովուրդնե-
րուն մէջ պիտի գիտցուին. զանոնք
ամէն տեսնողները պիտի ճանչնան,
թէ անոնք Տէրոջը օրհնած սե-
րունդն են ։
10 Ես Տէրոջմով պիտի ցնծամ,
իմ հոգիս իմ Աստուծովս պիտի
ուրախանայ. քանզի ինծի փրկու-
թեան հանդերձներ հագցուց,
զիս արդարութեան պատմուճա-
նով ծածկեց, փեսայի պէս՝ որ իրեն
փառաւոր խոյր կը դնէ, ու հարսի
պէս՝ որ իր զարդերովը կը զարդա-
11 րուի ։ Քանզի ինչպէս որ երկիրը
իր տունկը կ'աճեցընէ, ու պար-
տէզը իր մէջը ցանուածները կը
բուսցընէ, այնպէս ալ Տէր Եհո-
վան բոլոր ազգերուն առջևը արդա-
րութիւն ու գովութիւն պի-
տի բուսցընէ ։

## ԳԼ. ԿԲ

1 Մարգարէին եռանդուն փափաքը՝ եկեղեցին Աստուծոյ խոստումներուն մէջ հաստատելու համար ։ 5 Պաշտօնեաներուն գործը աւետարանի քարոզութեանը համար. 10 ու ժողովուրդը անոր պատրաստելու համար ։

1 Սիօնի սիրոյն համար պիտի չլռեմ,
ու Երուսաղէմի սիրոյն համար
պիտի չհանդարտիմ, մինչև որ
անոր արդարութիւնը՝ լոյսի պէս, և

Ն. Ք. Դ.Ք. Իրր 698

Եբր. ժբ. 22. Յայտ. ժգ. 1.
Գլ. խթ. 23. կա. 6. կզ. 11, 12.
Գլ. խգ. 3.
Գլ. իզ. 1.
Յայտ. իա. 23. իբ. 5.
Զաք. բ. 5.
Տես Ամով. ը. 9.
Գլ. ծբ. 1. Յայտ. իա. 27.
Սաղ. լէ. 11, 22. Մատ. ե. 5.
Գլ. կա. 3. Մատ. ժե. 13. Յոհ. ժե. 2.
Գլ. իթ. 23. խե. 11. Եփե. բ. 10.
Մատ. ժգ. 31, 32.
Գլ. ժա. 2. Ղու. դ. 18. Յոհ. ա. 32. գ. 34.
Սաղ. խե. 7.
Սաղ. ճխէ. 3. Գլ. ծէ. 15.
Գլ. իբ. 7. Տես Երեմ. լդ. 8.
Տես Ղև. իե. 9.
Գլ. լդ. 8. կգ. 4. կզ. 14. Մաղ. դ. 1, 3. Բ Թես. ա. 7, 8, 9.
Գլ. ծէ. 18. Մատ. ե. 4.
Սաղ. ղ. 11.

Ն. Ք. Դ.Ք. Իրր 698

Գլ. կ. 21.
Յոհ. ժե. 8.
Գլ. խթ. 8. ծը. 12.
Եզեկ. ԼԶ. 33—36.
Եփե. բ. 12.
Ել. ժթ. 6. Գլ. կզ. 21. Ա Պետ. բ. 5, 9. Յայտ. ա. 6. ե. 10.
Գլ. կ. 5, 11, 16.
Գլ. խ. 2. Զաք. թ. 12.
Սաղ. ժա. 7.
Գլ. ա. 11, 13.
Գլ. ծե. 3.
Գլ. կե. 23.
Ա.Տմ. գ. 18.
Սաղ. ճլբ. 9, 16.
Գլ. խթ. 18. Յայտ. իա. 2.
Սաղ. հբ. 3. ժե. 11.
Գլ. կ. 18. կբ. 7.

անոր փրկութիւնը՝ բոցավառ ջա-
2 հի պէս ճառագայթէ ։ ա Ու ազգերը
քու արդարութիւնդ՝ և բոլոր թա-
գաւորները քու փառքդ պիտի
տեսնեն ․ բ Ու դուն նոր անունով
պիտի կոչուիս , որն որ Տէրոջը բե-
3 րանը պիտի յանուանէ ։ Եւ Տէրո-
ջը ձեռքին մէջ գ վայելչութեան
պսակ՝ ու քու Աստուծոյդ ձեռքին
մէջ արքայական թագ պիտի ըլ-
4 լաս ։ դ Դուն մէյմըն ալ ե Թողուած
պիտի չկոչուիս , ու քու երկիրդ
մէյմըն ալ զԱւերակ պիտի չըսուի ․
հապա դուն՝ * «Իմ հաճածս» , ու
քու երկիրդ՝ Ամուսնացեալ պիտի
ըսուի ․ քանզի Տէրը քեզի պիտի
հաճի , ու քու երկիրդ պիտի ա-
5 մուսնանայ ։ Վասն զի ինչպէս որ
երիտասարդ մը կոյսի մը հետ կ՚ա-
մուսնանայ , այնպէս ալ քու տղաք-
ներդ քեզի հետ պիտի ամուսնա-
նան ․ և ինչպէս որ փեսան հարսին
վրայ կ՚ուրախանայ , այնպէս ալ
է քու Աստուածդ քու վրադ պիտի
ուրախանայ ։
6 ը Քու պարիսպներուդ վրայ ով
Երուսաղէմ՝ պահապաններ դրի ․
անոնք բոլոր օրը ու բոլոր գիշերը
բնաւ պիտի չլռեն ․ դուք ով Տէրը
7 յիշողներ՝ լուռ մի՛ կենաք , Ու ա-
նոր հանգստութիւն մի՛ տաք , մին-
չև որ անիկայ հաստատէ , ու մին-
չև որ երկրի վրայ Երուսաղէմը թ գո-
8 վելի ընէ ։ Տէրը իր աջ ձեռքին
վրայ ու իր զօրաւոր բազուկին վրայ
այսպէս երդում ըրաւ , թէ ժքու
ցորենդ մէյմըն ալ քու թշնամի-
ներուդ կերակուր պիտի չտամ ․ և
օտարաց որդիքը պիտի չխմեն քու
գինիդ , որուն համար դուն աշխա-
9 տեցար ․ Հապա զանիկայ հնձողները
պիտի ուտեն , ու Տէրոջը փառք
պիտի տան ․ և զանիկայ քաղողնե-
րը՝ ժա իմ սուրբ սրահներուս մէջը պի-
տի խմեն ։
10 Անցէ՛ք , անցէ՛ք դռներէն ․ ժբ ժո-
ղովուրդին ճամբայ պատրաստեցէք ․
շինեցէ՛ք , շինեցէք շաւիղները ․
քարերը անկէ ժողվեցէ՛ք ․ ժգ Ժողո-
վուրդներուն դրօշակ վերցուցէք ։
11 Ահա Տէրը մինչև երկրիս ծայրը
լսել տուաւ ․ ժդ Սիոնի աղջկանը ը-
սէ՛ք ․ Ահա քու Փրկիչդ կու գայ ․
ահա ժե անոր վարձքը իր հետն է , ու
գործոց հատուցումը իր առջևն է ։
12 Եւ անոնք Սուրբ ժողովուրդ՝ Տէ-
րոջը փրկածները պիտի ըսուին ․ ու
դուն՝ Փնտռուած , — ժզ Չթողուած
քաղաք պիտի կոչուիս ։

Ն․ Ք․ ՂՔ․ իրր 698
ա Գլ․ կ․ 3 ։
բ Տես Հմր 4 , 12 ։ Գլ․ կե․ 15 ։
գ Զաք․ թ․ 16 ։
դ Ովս․ ա․ 10 ։ Ա Պետ․ բ․ 10 ։
ե Գլ․ խթ․ 14 ։ ծդ․ 6 , 7 ։
զ Գլ․ ծգ․ 1 ։
* Եբր․ Եփ-սիբա , այ իմ հաճու-թիւնս անոր մէջ ։
է Գլ․ կե․ 19 ։
ը Եզեկ․ գ․ 17 ։ լգ․ 7 ։
թ Գլ․ կա․ 11 ։ Սոփ․ գ․ 20 ։
ժ Բ Օր․ իը․ 31 , 33 ։ Երեմ․ ե․ 17 ։
ժա Տես Բ Օր․ ժբ․ 12 ։ ժդ․ 23 , 26 ։ ժզ․ 11 , 14 ։
ժբ Գլ․ խ․ 3 ։ ծէ․ 14 ։
ժգ Գլ․ ժա․ 12 ։
ժդ Զաք․ թ․ 9 ։ Մատ․ իա․ 5 ։ Յովհ․ ժբ․ 15 ։
ժե Գլ․ խ․ 10 ։ Յայտ․ իբ․ 12 ։
ժզ Հմր 4 ։

## ԳԼ․ ԿԳ

1 Քրիստոս կը ցուցընէ թէ ինքը ո՛վ է , 2 թէ ինչ է իր յաղթութիւնը իր թշնամիներուն վրայ , 7 և թէ ինչ է իր ողորմութիւնը որ պիտի ընէ իր եկեղեցիին ․ 10 իր արդար բար-կութեանը մէջ իր ձրի ողորմութիւնը կը յի-շէ ։ 15 Եկեղեցին իր աղօթքին 17 ու իր գանգատներուն մէջ՝ իր հաւատքը կը խոստո-վանի ։

1 Ո՞վ է ասիկայ որ կու գայ Եդով-
մէն , կարմրագոյն զգեստով Բօս-
րայէն , որ փառաւոր հանդերձով
զարդարուած է , և իր շատ զօրու-
թեամբը պանծալով կը քալէ ։
Ես եմ , որ արդարութիւն կը
խօսիմ , — փրկելու կարողութիւն
ունիմ ։
2 Ինչո՞ւ համար ա քու հանդերձդ
կարմիր է , ու քու զգեստներդ
հնձանի մէջ կոխողին պէս է ։
3 բ Հնձանին մէջ մինակ ես կոխե-
ցի , և ժողովուրդներէն՝ ինծի հետ
մարդ մը չկար ․ ու զանոնք իմ
բարկութեամբս կոխեցի , և իմ
սրտմտութեամբս զանոնք ճմլեցի ․
ու անոնց արիւնը իմ զգեստներուս
վրայ ցաթկեց , և բոլոր հանդերձ-
4 ներս ներկեցի ․ Քանզի գ իմ սրտիս
մէջը վրէժխնդրութեան օր կար ․
ու իմ փրկածներուս տարին հասած
5 էր ․ դ Եւ նայեցայ , բայց ե օգնող
չկար , և զարմացայ որ ձեռնտու ե-
ղող մը չկար ․ ուստի իմ զբազուկս
ինծի համար փրկութիւն ըրաւ , ու
իմ բարկութիւնս ինծի ձեռնտու
6 եղաւ ։ Եւ իմ բարկութեամբս
ժողովուրդներ կոխեցի , ու է զա-
նոնք իմ սրտմտութեամբս † գինով-
ցուցի , և անոնց արիւնը գետինը
իջեցուցի ։
7 Տէրոջը ողորմութիւնները , Տէ-
րոջը գովութիւնները պիտի յի-
շեմ , Տէրոջը բոլոր մեզի ըրածնե-
րուն համեմատ , և ան շատ բարիք-
ներուն համեմատ , որ իր գթու-
թեամբը և առատ ողորմութեամբը
8 Իսրայէլի տանը ըրած է ։ Քանզի
ըսաւ ․ Իրաւցընէ անոնք իմ ժողո-
վուրդս են , սուտ չելլելու որդիներ
են ․ ու անիկայ անոնց փրկիչ ե-
9 ղաւ ․ ը Անոնց ամէն նեղութիւն-
ներուն ատենը՝ նեղութիւն քա-
շեց ․ թ և իր երեսին հրեշտակը զա-
նոնք ազատեց ․ ժ իր սիրովը ու
գթութիւնովը զանոնք փրկեց , և
ժա զանոնք վերցուց , ու հին ժամա-
նակին բոլոր օրերուն մէջ զանոնք
10 կրեց ։ Բայց անոնք ժբ ապստամ-
բեցան , ու ժգ անոր Սուրբ Հոգին
բարկացուցին ․ ժդ անիկայ ալ դար-
ձաւ անոնց թշնամի եղաւ , ու ին-
քը անոնց հետ պատերազմ ըրաւ ։
11 Ան ատենը առջի օրերը , — Մով-
սէսը , և անոր ժողովուրդը ‡ յիշե-
ցին ․ Ո՞ւր է անիկայ , որ ժե իր հօ-
տին հովիւովը զանոնք ծովէն հա-
նեց ․ ժզ Ո՞ւր է անիկայ , որ անոնց

Ն․ Ք․ ՂՔ․ իրր 698
ա Յայտ․ ժթ․ 13 ։
բ Ողբ․ ա․ 15 ։ Յայտ․ ժդ․ 19 , 20 ։ ժթ․ 15 ։
գ Գլ․ լդ․ 8 ։ կա․ 2 ։
դ Գլ․ խա․ 28 ։ ծթ․ 16 ։
ե Յովհ․ ժզ․ 32 ։
զ Սաղ․ ղը․ 1 ։ Գլ․ ծթ․ 16 ։
է Յայտ․ ժզ․ 6 ։
† Կամ՝ ջախ-ջախեցի ։
ը Դատ․ ժ․ 16 ։ Զաք․ բ․ 8 ։ Գոր․ թ․ 4 ։
թ Ել․ ժգ․ 19 ։ իգ․ 20 , 21 ։ լգ․ 14 ։ Մաղ․ գ․ 1 ։ Գոր․ ժբ․ 11 ։
ժ Բ Օր․ է․ 7 , 8 ։
ժա Ել․ ժթ․ 4 ։ Բ Օր․ ա․ 31 ։ լբ․ 11 , 12 ։ Գլ․ խզ․ 3 , 4 ։
ժբ Ել․ ժէ․ 24 ։ Թուոց ժդ․ 11 ։ Սաղ․ հը․ 56 ։ ղե․ 9 ։
ժգ Սաղ․ հը․ 40 ։ Գոր․ է․ 51 ։ Եփե․ դ․ 30 ։
ժդ Ել․ իգ․ 21 ։
‡ Կամ՝ յի-շեց ։
ժե Ել․ ժդ․ 30 ։ լբ․ 11 , 12 ։ Թուոց ժդ․ 13 , 14 , 15 ։ Երեմ․ բ․ 6 ։
ժզ Թուոց ժա․ 17 , 25 ։ Նէեմ․ թ․ 20 ։ Դան․ գ․ 8 ։ Անգ․ բ․ 5 ։

Ն․ Ք․ ԴՔ․ էրր 698

Յ Ել․ ԺԵ․ 6։
* Եզր․ ընե-լու
Ն Ել․ ԺԴ․ 21։ Յես․ Դ․ 16։
Սաղ․ ՃԶ․ 9։
Բ Թագ․ Է․ 23։
Բ Օր․ ԻԶ․ 15։ Սաղ․ Ձ․ 14։
Սաղ․ ԼԴ․ 14։
Երեմ․ ԼԱ․ 20։ Ովս․ ԺԱ․ 8։
Բ Օր․ ԼԲ․ 6։ Ա Մն․ ԻԹ․ 10։ Գլ․ ԿԴ․ 8։
Յոբ․ ԺԴ․ 21։ Ժող․ Թ․ 5։
Սաղ․ ՃԺԹ․ 10։
Տես Գլ․ Զ․ 10։ Յոհ․ ԺԲ․ 40։ Հռով․ Թ․ 18։
Թուոց Ժ․ 36։ Սաղ․ Հ․ 13։
Բ Օր․ Է․ 6։ ԻԶ․ 19։ Գլ․ ԿԲ․ 12։ Դան․ Ը․ 24։
Սաղ․ ՀԴ․ 7։
† Կամ՝ Մենք այնպէս եղանք, որ դուն մեր վրայ բնաւ չէիր տիրեր, և քու անունդ մեր վրայ չէր կանչուեր։

Սաղ․ ՃԽԴ․ 5։
Դատ․ Ե․ 5։ Միք․ Ա․ 4։
‡ Կամ՝ սասանէին՝
Ել․ ԼԴ․ 10։ Դատ․ Ե․ 4, 5։ Սաղ․ ԿԸ․ 8։ Ամբ․ Գ․ 3, 6։
‖ Կամ՝ սասանեցան։
Սաղ․ ԼԱ․ 19։ Ա Կոր․ Բ․ 9։
Գոր․ Ժ․ 35։
Գլ․ ԻԶ․ 8։

12 մէջը իր Սուրբ Հոգին դրաւ․ Իր
փառաւոր բազուկը Մովսէսին աջ
ձեռքին հետ պտըտցուց․ իրեն
յաւիտենական անուն *վաստըկե-
լու համար՝ անոնց առջևէն ջու-
13 րերը պատռեց․ Որ զանոնք ան-
դունդներէն առանց սահելու ան-
ցուց, ինչպէս որ ձի մը անապա-
14 տէն կ'անցնի։ Տէրոջը Հոգին զա-
նիկայ հանգստացուց՝ հովիտի մէջ
իջնող անասուններու պէս․ դուն
քու ժողովուրդիդ՝ այնպէս առաջ-
նորդութիւն ըրիր, որ քեզի փա-
ռաւոր անուն վաստըկիս։
15 Երկինքէն նայէ՛, և քու սուրբ
ու փառաւոր բնակութենէդ տես․
ո՞ւր է քու նախանձդ ու զօրու-
թիւնդ․ քու աղիքներուդ գալա-
րիլը, և ինծի ըրած ողորմութիւն-
16 ներդ արգիլուեցա՞ն։ Քանզի մեր
Հայրը դուն ես, թէև Աբրահամը
մեզ չգիտեր, ու Իսրայէլը մեզ
չճանչնար․ դուն ո՛վ Տէր՝ մեր
Հայրն ես, ու քու անունդ ՚ի
17 սկզբանէ մեր Փրկիչն է։ Ո՛վ Տէր՝
ինչո՞ւ համար մեզ քու ճամ-
բաներէդ կը մոլորցընես․ ինչո՞ւ
մեր սիրտը կը խստացընես, որ
քեզմէ չվախնանք․ քու ծառանե-
րուդ համար՝ քու ժառանգու-
թեանդ ցեղերուն համար դարձի՛ր։
18 Քու սուրբ ժողովուրդդ իրենց
ժառանգութիւնը քիչ ատեն վա-
յելեցին․ մեր թշնամիները քու
19 սրբարանդ ոտնակոխ ըրին։ †Մենք
՚ի սկզբանէ քուկդ ենք․ դուն անոնց
վրայ չտիրեցիր, ու քու անունդ
անոնց վրայ չկանչուեցաւ"։

## ԳԼ․ ԿԴ

1 Եկեղեցին աղօթք կ'ընէ Աստուծոյ կարողու-
թեանը յայտնուելուն համար․ 5 Աստուծոյ
ողորմութիւնը հրատարակելով՝ իր բնական
ապականութիւնը կը խոստովանի․ 9 իր նե-
ղութեանը համար կը գանգատի։

1 Երանի՛ թէ՝ երկինքը ճեղքելով
վար իջնէիր․ քու ներկայու-
2 թենէդ լեռները ‡հալէին՝ խռիւնե-
րը բռընկցընող կրակի պէս, ջու-
րերը եռացընող կրակի պէս, որ
քու անունդ թշնամիներուդ յայտ-
նէիր, ու ազգերը քու երեսէդ դո-
3 ղային, Երբոր ան սոսկալի բաները
ըրիր, որոնց չէինք՝ յուսար, իջար,
քու երեսէդ լեռները ‖հալեցան։
4 Քանզի սկիզբէն ՚ի վեր չլսուեցաւ,
ու ականջ չլսեց, և աչք չտեսաւ
քեզմէ զատ Աստուած մը, որ
իրեն յուսացողներուն ասանկ բաներ
5 ընէ։ Ուրախ եղողին, ու արդա-
րութիւն գործողին, և քու ճամ-
բաներուդ մէջը քեզ յիշողներուն
հասար․ ահա՛ բարկացար, վասն զի

մեղք գործեցինք․ եթէ որ միշտ
անոնց մէջը կենայինք, փրկութիւն
6 կը գտնէինք։ Բայց ամէնքս պիղծ
բանի պէս եղանք, ու մեր բոլոր
արդարութիւնները դաշտանի լա-
թին պէս է․ և ամէնքս տերևի
պէս կը թառամինք, ու մեր ան-
օրէնութիւնները հովի պէս մեզ կը
7 վերցընեն։ Եւ քու անունդ կան-
չող չկայ, որ արթըննայ, ու
քեզմով ոյժ գտնէ․ քանզի քու
երեսդ մեզմէ ծածկեցիր, ու մեր ան-
օրէնութիւններուն պատճառովը
8 մեզ մաշեցիր։ Բայց հիմա ո՛վ
Տէր՝ դուն մեր Հայրն ես․ մենք
կաւ ենք, ու դուն մեր Բրուտն
ես․ և ամէնքս քու ձեռացդ գործքն
9 ենք։ Շատ մի՛ բարկանար՝ ո՛վ
Տէր, ու մեր անօրէնութիւնը յա-
ւիտեան մի՛ յիշեր․ ահա՛ նայէ՛,
կ'աղաչենք, ամէնքս քու ժողո-
10 վուրդդ ենք։ Սուրբ քաղաքներդ
անապատ եղան․ Սիօնը անապատ
եղաւ․ Երուսաղէմը աւերակ ե-
11 ղաւ։ Մեր սուրբ ու փառաւոր
տունը՝ որուն մէջ մեր հայրերը քեզ
կ'օրհնէին, հրոյ ճարակ եղաւ, և
մեր ամէն ցանկալի բաները ա-
12 մայի եղան։ Ասոնց վրայ ինք-
զինքդ պիտի զսպե՞ս՝ ո՛վ Տէր․
լռութեամբ պիտի լռե՞ս, ու մեզ
խիստ շատ պիտի նեղե՞ս։

## ԳԼ․ ԿԵ

1 Հեթանոսաց կոչումը։ 2 Հրէայք կը մեր-
ժուին իրենց անհաւատութեանը, կռապաշ-
տութեանը ու կեղծաւորութեանը համար։ 8
Մէկ մնացորդ մը պիտի փրկուի։ 11 Չարե-
րուն վրայ հասնելու դատաստանները, ու
աստուածապաշտներուն տրուելու բարիքնե-
րը։ 17 Նոր Երուսաղեմին երջանիկ վիճակը։

1 Զիս չհարցընողներէն փնտռուե-
ցայ, զիս չխնդրողներէն գըտ-
նուեցայ․ իմ §անունս չկանչող
ազգին՝ Ահա՛ ես, ահա՛ ես՝ ըսի։
2 Ամէն օր իմ ձեռքերս երկընցու-
ցի ապստամբ ժողովուրդի մը՝
որոնք անանկ ճամբու մէջ կը
քալեն որ աղէկ չէ, և իրենց խոր-
3 հուրդներուն կը հետևին․ Անանկ
ժողովուրդի մը՝ որ միշտ երե-
սիս դէմ զիս կը սրդողեցընեն․
պարտէզներու մէջ կը զոհեն, ու
աղիւսներու վրայ խունկ կը ծխեն․
4 Գերեզմաններու մէջ կը նստին,
և գիշերը առանձին տեղուանք
կ'անցընեն․ խոզի միս կ'ու-
տեն, ու իրենց ամաններուն մէջը
գարշելի բաներու արգանակ կայ,
5 Որոնք կ'ըսեն․ Մէկդի՛ կեցիր,
ինծի մի՛ դպչիր․ քանզի ես քեզմէ
սուրբ եմ։ Ասոնք իմ ռնգացս
մէջ ծուխ են, ու ամէն օր բորբո-
6 քած կրակ են։ Ահա՛ իմ առջևս

Ն․ Ք․ ԴՔ․ էրր 698

Սաղ․ Գ․ 6։
Փիլ․ Գ․ 9։
Սաղ․ Զ․ 5, 6։
Ովս․ Է․ 7։
Գլ․ ԿԴ․ 16։
Գլ․ ԻԹ․ 16։ Խե․ 9։ Երեմ․ ԺԸ․ 6։ Հռով․ Թ․ 20, 21։
Եփես․ Բ․ 10։
Սաղ․ ՀԴ․ 1, 2։ ՀԹ․ 8։
Սաղ․ ՀԹ․ 13։
Սաղ․ ՀԹ․ 1։
Դ Թագ․ ԻԵ․ 9։ Բ Մն․ ԼԶ․ 19։ Սաղ․ ՀԴ․ 7։
Եզեկ․ ԻԴ․ 21, 25։
Գլ․ ԽԲ․ 14։
Սաղ․ ՁԳ․ 1։

Հռով․ Թ․ 24, 25, 26, 30։ Ժ․ 20։ Եփես․ Բ․ 12, 13։
§ Կամ՝ անունովս չկանչուած․ Գլ․ ԿԳ․ 19։
Հռով․ Ժ․ 21։
Բ Օր․ ԼԲ․ 21։
Գլ․ Ա․ 29։ ԿԶ․ 17։ Տես Ղև․ ԺԷ․ 5։
Բ Օր․ ԺԲ․ 11։
Գլ․ ԿԶ․ 17։ Տես Ղև․ ԺԱ․ 7։
Տես Մատթ․ Թ․ 11։ Ղուկ․ Ե․ 30։ ԺԸ․ 11։ Յուդ․ 19։
Բ Օր․ ԼԲ․ 34։ Մաղ․ Գ․ 16։

Ն. Ք. Ծ. իբր 698

ր Սաղ. ծ. 3 ։
ծ Սաղ. հթ. 12 ։ Երեմ. ժզ. 18 ։ Եզեկ. ժա. 21 ։
է Եզ. ի. 5 ։
ը Եզեկ. ժը. 6 ։
ի Եզեկ. ի. 27, 28 ։
ծ Յովել. բ. 14 ։
կ Հմր 15, 22 ։ Մատ. իդ. 22 ։ Հռով. ժա. 5, 7 ։
հ Գլ. լդ. 9 ։ լե. 2 ։
ձ Յես. է. 24, 26 ։ Ովս. բ. 15 ։
ղ Գլ. ծզ. 7 ։ ծէ. 13 ։ Հմր 25 ։
* Կամ՝ Բաղդին
‡ Եզեկ. իգ. 41 ։ Ա Կոր. ժ. 21 ։
† Կամ՝ Ճակատագրին
‡ Եբր. խառնուածք
‖ Եբր. Ճակատագրեմ
ճ Բ Մն. լզ. 15, 16 ։ Առակ. ա. 24, 25 ։ Գլ. կզ. 4 ։ Երեմ. է. 13 ։ Զաք. է. 7 ։ Մատ. իա. 34-43 ։
մ Մատ. ը. 12 ։ Ղուկ. ժգ. 28 ։
յ Հմր 9, 22 ։
ն Տես Երեմ. իթ. 22 ։ Զաք. ը. 13 ։
շ Գլ. կբ. 2 ։ Գործ. ժա. 26 ։
ո Սաղ. հբ. 17 ։ Երեմ. դ. 2 ։
չ Բ Օր. զ. 13 ։ Սաղ. կգ. 11 ։ Գլ. ժթ. 18 ։ խե. 23 ։ Սոփ. ա. 5 ։
պ Գլ. ծա. 16 ։ կզ. 22 ։ Բ Պետ. գ. 13 ։ Յայտ. իա. 1 ։

գրուած է. Ես պիտի չլռեմ, հապա
պիտի հատուցանեմ. այո՛, անոնց
ծոցին մէջը պիտի հատուցանեմ
7 Ձեր անօրէնութիւնները՝ ձեր հայ-
րերուն անօրէնութեանցը հետ մէկ-
տեղ, որոնք լեռներուն վրայ
խունկ ծխեցին, ու բլուրներուն
վրայ զիս անարգեցին, կ'ըսէ Տէրը.
ուստի անոնց առջի գործքերը՝ ի-
րենց ծոցերուն մէջը պիտի լեցը-
նեմ ։
8 Տէրը այսպէս կ'ըսէ. Ձոր օրի-
նակ երբոր ողկոյզի մը վրայ քաղ-
ցու գտնուի, կ'ըսեն թէ՝ Անիկայ
մի՛ կորսընցըներ, քանզի անոր վը-
րայ օրհնութիւն կայ. ես ալ իմ
ծառաներուս համար այնպէս պիտի
ընեմ, որպէս զի ամէնը չկորսընցը-
9 նեմ ։ Ու Յակոբէն սերունդ, և
Յուդայէն իմ լեռներուս ժառան-
գորդ մը պիտի հանեմ. ու իմ
ընտրեալներս անիկա պիտի
ժառանգեն, և իմ ծառաներս հոն
10 պիտի բնակին ։ Ու զիս փնտռող
ժողովուրդիս համար Շարօնը՝ հօ-
տերու փարախ, և Աքովրի ձորը՝
արջառներու մակաղատեղ պիտի
11 ըլլայ ։ Բայց դուք Տէրը թողու-
ցիք, ու իմ սուրբ լեռս մոռցաք.
*Գադ կուռքին՝ սեղան պատրաս-
տեցիք, ու †Մենիին ‡թափելու
12 նուէր՝ լեցուցիք ։ Ես ալ ձեզ
սուրի պիտի ‖մատնեմ. և ամէնքդ
պիտի ծռիք մորթուելու համար.
քանզի կանչեցի, ու պատասխան
չտուիք. խօսեցայ, ու մտիկ չը-
րիք. հապա իմ առջևս չարութիւն
ըրիք, և ինծի հաճելի չեղածը ընտ-
13 րեցիք ։ Անոր համար Տէր Եհովան
այսպէս կ'ըսէ. Ահա իմ ծառաներս
պիտի ուտեն, բայց դուք անօթի
պիտի մնաք. ահա իմ ծառաներս
պիտի խմեն, բայց դուք ծարաւ
պիտի մնաք. ահա իմ ծառաներս
պիտի ուրախանան, բայց դուք
14 ամօթալից պիտի ըլլաք. Ահա իմ
ծառաներս սրտի ուրախութեամբ
պիտի ցնծան, բայց դուք սրտի
ցաւէն պիտի աղաղակէք, և հո-
15 գիի ճնշումէն պիտի ոռնաք ։ Ու
ձեր անունը՝ իմ ընտրածներուս
անէծքի համար պիտի թողուք.
և Տէր Եհովան քեզ պիտի մեռցը-
նէ, ու իր ծառաները ուրիշ ա-
16 նունով պիտի կանչէ, Որ երկրի
վրայ օրհնուողը՝ ճշմարիտ Աստու-
ծով օրհնուի, ու երկրի վրայ եր-
դուողը՝ ճշմարիտ Աստուծով
երդում ընէ. քանզի առջի նեղու-
թիւնները մոռցուեցան, ու անոնք
17 իմ աչքերէս ծածկուեցան ։ Քան-
զի ահա ես նոր երկինք ու նոր եր-
կիր կը ստեղծեմ. և առջինները
պիտի չյիշուին, ու անոնք միտքը
18 պիտի չգան ։ Բայց դուք իմ ստեղ-
ծագործութիւնովս յաւիտեանս
յաւիտենից ուրախացէ՛ք և ցնծա-
ցէ՛ք. վասն զի ահա ես Երուսա-
ղէմը ցնծութեան համար, ու անոր
ժողովուրդը ուրախութեան համար
19 կը ստեղծեմ ։ Ու Երուսաղէմի
վրայ պիտի ցնծամ, և իմ ժողո-
վուրդիս վրայ պիտի ուրախանամ.
ու հոն մէյմըն ալ լացի ձայն ու
20 աղբի ձայն պիտի չլսուի ։ Հոն
մէյմըն ալ քիչ օր ապրող տղայ,
կամ օրերը չլեցուցած ծեր պիտի
չըլլայ. քանզի երիտասարդը՝ հա-
րիւր տարեկան պիտի մեռնի, և
հարիւր տարեկան մեղաւորը՝ ա-
21 նէծքի պիտի հանդիպի ։ Ու տու-
ներ պիտի շինեն, ու պիտի բնակին,
և այգիներ պիտի տնկեն, ու անոնց
22 պտուղը պիտի ուտեն ։ Անոնք
պիտի չշինեն՝ որ ուրիշները բնա-
կին, անոնք պիտի չտնկեն՝ որ ու-
րիշները ուտեն. վասն զի իմ ժո-
ղովուրդիս օրերը՝ ծառի օրերու
չափ պիտի ըլլան. և իմ ընտրած-
ներս իրենց ձեռացը գործքերը պի-
23 տի հինցընեն ։ Անոնք պարապ տե-
ղը պիտի չաշխատին, ու դժբաղ-
դութեան համար զաւակներ պիտի
չծնանին. քանզի անոնք Տէրոջը
օրհնածներուն սերունդն են, ու ա-
նոնց հետ անոնց զաւակներն ալ ։
24 Եւ պիտի ըլլայ որ՝ անոնք դեռ
չկանչած՝ պատասխան պիտի տամ,
ու քանի որ դեռ կը խօսին՝ պիտի
25 լսեմ ։ Գայլը ու գառը մէկտեղ
պիտի արածին, և առիւծը արջա-
ռի պէս յարդ պիտի ուտէ. ու
օձին կերակուրը հող պիտի ըլլայ.
անոնք իմ բոլոր սուրբ լեռանս մէջ
վնաս պիտի չտան, ու պիտի չա-
պականեն, կ'ըսէ Տէրը ։

## ԳԼ. ԿԶ

1 Փառաւոր Աստուծոյ ծառայութիւնը պէտք է որ ըլլայ խոնարհութեամբ և անկեղծութեամբ ։ 5 Աստուած կը մխիթարէ խոնարհները՝ յիշելով եկեղեցիին զարմանալի զարգացումը, 10 ու անոր վայելելու բարիքները ։ 15 Աստուծոյ անսպառ դատաստանները չարերուն դէմ ։ 19 Հեթանոսները սուրբ եկեղեցի մը պիտի ունենան, 24 ու չարերուն դատապարտութիւնը՝ պիտի տեսնեն ։

1 Տէրը այսպէս կ'ըսէ. Երկինքը իմ
աթոռս է, ու երկիրը իմ ոտ-
քերուս պատուանդանն է. աս
ի՞նչ տուն է որ ինծի համար կը
շինէք, և աս ի՞նչ տեղ է իմ
2 հանգստութեանս համար. Քանզի
ասոնց ամէնը իմ ձեռքս շինեց, ու
ասոնց ամէնը եղան, կ'ըսէ Տէրը.
Բայց ես անոր պիտի նայիմ,
այսինքն խոնարհին, և կոտրած

Ն. Ք. Ծ. իբր 698

ջ Գլ. կբ. 5 ։
ռ Գլ. լե. 10 ։ ծա. 11 ։ Յայտ. է. 17 ։ իա. 4 ։
ս Ժող. ը. 12 ։
վ Տես Ղև. իզ. 16 ։ Բ Օր. իը. 30 ։ Գլ. կբ. 8 ։ Ամով. թ. 14 ։
տ Սաղ. ղբ. 12 ։
ր Հմր 9, 15 ։
ց Տես Բ Օր. իը. 41 ։ Ովս. թ. 12 ։
ւ Գլ. կա. 9 ։
փ Սաղ. լբ. 5 ։ Դան. թ. 21 ։
ք Գլ. ժա. 6, 7, 9 ։
օ Ծն. գ. 14 ։
ա Գ Թագ. ը. 27 ։ Բ Մն. զ. 18 ։ Մատ. ե. 34, 35 ։ Գործ. է. 48, 49 ։ ժէ. 24 ։
բ Գլ. ծէ. 15 ։ կա. 1 ։
գ Սաղ. լդ. 18 ։ ծա. 17 ։

Ն․ Ք․ ԳՌ․
Իրր 698

Դ Եզր․ Թ․ 4 ։ Ժ․ 3 ։ Առակ․ ԻԸ․ 14 ։ Հմր 5 ։
Ե Գլ․ Ա․ 11 ։
* Եբր․ ու- նայնութիւն օրհնողի
Զ Առակ․ Ա․ 24 ։ Գլ․ ԿԵ․ 12 ։ Երեմ․ Է․ 13 ։
Է Հմր 2 ։
Ը Գլ․ Ե․ 19 ։ Բ Թես․ Ա․ 10 ։ Տիտ․ Բ․ 13 ։
Ժ Գլ․ ԽԸ․ 18 ։ Կ․ 5 ։
Ի Գլ․ Կ․ 16 ։
Լ Գլ․ ԽԹ․ 22 ։ Կ․ 4 ։
† Եբր․ մէկը

հոգի ունեցողին , ու Դ իմ խօսքէս
դողացողին ։
3 ԵԱրջառ մորթողը՝ մարդ մեռ-
ցընողի պէս է , գառնուկ զոհողը՝
շուն մորթողի պէս , և նուէր մա-
տուցանողը՝ խոզի արիւն մատու-
ցանողի պէս , կնդրուկ ծխողը՝
* կուռք պաշտողի" պէս ․ իրաւցընէ
անոնք իրենց ճամբաները ընտրե-
ցին , ու անոնց հոգիները իրենց
4 զարշելիներէն կ'ախորժեն ։ Ես ալ
անոնց թշուառութիւնները պիտի
ընտրեմ , և իրենց վախցած բաները
իրենց վրայ պիտի բերեմ ․ Զվասն
զի կանչեցի ու պատասխան տուող
չեղաւ ․ խօսեցայ , ու մտիկ չըրին ․
հապա իմ առջևս չարութիւն ըրին ,
և իմ չհաւնածս ընտրեցին ։
5 Տէրոջը խօսքը մտիկ ըրէ՛ք՝ Էով
անոր խօսքէն դողացողներ ․ իմ
անուանս համար ձեզ ատող , ու
ձեզ անարգող ձեր եղբայրները ը-
սին ․ Ըթող Տէրը փառաւորուի ,
Թու ձեր ուրախութիւնը տես-
նենք ․ բայց անոնք պիտի ամըչ-
նան ։
6 Քաղաքէն աղաղակի ձայն՝ տա-
ճարէն մէկ ձայն մը կու գայ՝ Տէրոջը
ձայնը՝ որ իր թշնամիներուն պա-
7 տիժ կը հատուցանէ ։ Ցաւ չքա-
շած՝ ծնաւ , ցաւը չհասած՝ արու
8 զաւակ ծնաւ ։ Ասանկ բան մը ո՞վ
լսեց , ասանկ բան մը ո՞վ տեսաւ ․
միթէ երկիրը մէկ օրուան մէ՞ջ
ծնաւ , կամ մէկ ազգ մը մէկ ան-
գամի՞ն ծնաւ ․ քանզի Սիօնը ցաւ-
քաշածին պէս՝ իր տղաքները ծնաւ ։
9 Ես որ ծնանելու վայրկեանը կը բե-
րեմ , ծնանիլ պիտի չտա՞մ , կ'ըսէ
Տէրը ․ ես որ ծնանիլ կու տամ ,
արգանդը պիտի գոցե՞մ , կ'ըսէ քու
10 Աստուածդ ։ Երուսաղէմին հետ
ուրախացէ՛ք , ու անոր հետ ցըն-
ծացէ՛ք դուք ամէնքդ որ զա-
նիկայ կը սիրէք ․ մեծապէս ուրա-
խացէ՛ք անոր հետ՝ դուք ամէնքդ որ
անոր համար սուգ կը բռնէք ․
11 Վասն զի անոր մխիթարութեան
ստինքներէն պիտի ծծէք , ու
կշտանաք ։ վասն զի դուք պիտի
դիէք , և անոր փառքին առատու-
թիւնովը զուարճանաք ։
12 Քանզի Տէրը այսպէս կ'ըսէ ․ Ահա
ես Ժանոր վրայ խաղաղութիւնը
գետի պէս , ու ազգերուն փառքը
յորդահոս հեղեղի պէս պիտի տա-
րածեմ ․ և Իպիտի դիէք ․ Լգիրկի
վրայ պիտի վերցուիք , ու ծունկե-
13 րու վրայ պիտի գգուիք ։ Ինչպէս
որ մէկ մայր մը † իր տղան" կը մխի-
թարէ , այնպէս ալ ես ձեզ պիտի
մխիթարեմ ․ ու Երուսաղէմին մը-
խիթարութիւն պիտի գտնէք ։
14 Ու պիտի տեսնէք , ու սրտերնիդ
պիտի ուրախանայ ․ և Խ ձեր ոսկոր-
ները կանանչ խոտի պէս պիտի
ծաղկին ․ ու Տէրոջը ձեռքը՝ իր ծա-
ռաներուն վրայ՝ և անոր բարկու-
թիւնը՝ իր թշնամիներուն վրայ
15 պիտի յայտնուի ։ Ծ Քանզի ահա
Տէրը կրակով կու գայ , ու անոր
կառքերը մրրիկի պէս են , որ իր
բարկութիւնը սրտմտութիւնով , և
իր սպառնալիքը՝ կրակի բոցով 'ի
16 գործ դնէ ։ Քանզի Տէրը կրակով
ու Կիր սրովը պիտի դատէ ամէն
մարմինը ․ ու Տէրոջմէ սպաննուած-
ները շատ պիտի ըլլան ։
17 Հ Զիրենք սրբողները , և պար-
տէզներու մէջտեղը իրարմէ ետև
մաքրուողները , և խոզի միս , ու
պիղծ բաներ , և մուկ ուտողները՝
մէկտեղ բնաջինջ պիտի ըլլան ,
18 կ'ըսէ Տէրը ։ Բայց ես անոնց
գործքերը ու խորհուրդները գի-
տեմ ․ և պիտի ըլլայ որ՝ բոլոր ազ-
գերը ու լեզուները պիտի ժողվեմ ․
և անոնք պիտի գան , ու իմ փառ-
19 քըս տեսնեն ։ Ու անոնց մէջը
նշան պիտի դնեմ , ու անոնցմէ
ազատուածները ազգերուն պիտի
ղրկեմ , այսինքն դէպ 'ի Թարսիս ,
դէպ 'ի Փուղ և Ղուդ՝ (աղեղ-
նաւորները ,) դէպ 'ի Թոբէլ ու
Յաւան , ան հեռու կղզիները , որ
իմ համբաւս չլսեցին , և իմ փառ-
քըս չտեսան ․ Յու իմ փառքս
20 ազգերուն մէջ պիտի պատմեն ։ Ու
անոնք՝ ձիերով ու կառքերով ,
դահաւորակներով , ջորիներով , ու
տաճիկ ուղտերով՝ ձեր բոլոր եղ-
բայրները ամէն ազգերէն իմ սուրբ
լեռս Երուսաղէմը Ղ Տէրոջը ընծայ
պիտի բերեն , կ'ըսէ՝ Տէրը , ինչպէս
որ Իսրայէլի որդիքը մաքուր ամա-
նով Տէրոջը տունը ընծայ կը բե-
21 րեն ։ Ու անոնցմէ ալ պիտի առ-
նեմ , Ճ քահանաներ ու Ղևտացիներ
ըլլալու համար , կ'ըսէ Տէրը ։
22 Քանզի ինչպէս որ իմ ստեղծելու
Մ Նոր երկինքս , ու Նոր երկիրս իմ
առջևս պիտի կենայ , կ'ըսէ Տէրը ,
այնպէս ալ ձեր սերունդը ու ձեր
23 անունը պիտի կենայ ։ Ու Յ պիտի
ըլլայ որ՝ Նոր ամիսէ Նոր ամիս , ու
շաբաթէ շաբաթ , Ն ամէն մարմին
իմ առջևս երկրպագութիւն ընե-
24 լու պիտի գայ , կ'ըսէ Տէրը ։ Ու
անոնք պիտի ելլեն , ու Շ ինծի
ապստամբ եղող մարդոց դիերը
պիտի տեսնեն ․ քանզի Ո անոնց որ-
դը պիտի չմեռնի , և անոնց կրակը
պիտի չմարի ․ ու անոնք ամէն
մարմնոյ զզուանք պիտի ըլլան ։

Ն․ Ք․ ԳՌ․
Իրր 698

Խ Տես Եզեկ․ ԼԷ․ 1 , Ա ։
Ծ Գլ․ Թ․ 5 ։ Բ Թես․ Ա․ 8 ։
Կ Գլ․ ԻԵ․ 1 ։
Հ Գլ․ ԿԵ․ 3 , 4 ։
Յ Մտղ․ Ա․ 11 ։
Ղ Հռով․ ԺԵ․ 16 ։
Ճ Ել․ ԺԹ․ 6 ։ Գլ․ ԿԱ․ 6 ։ Ա Պետ․ Բ․ 9 ։ Յայտ․ Ա․ 6 ։
Մ Գլ․ ԿԵ․ 17 ։ Բ Պետ․ Գ․ 13 ։ Յայտ․ ԻԱ․ 1 ։
Յ Զաք․ ԺԴ․ 16 ։
Ն Սաղ․ ԿԵ․ 2 ։
Շ Հմր 16 ։
Ո Մար․ Թ․ 43 , 45 , 47 ։

# ՄԱՐԳԱՐԷՈՒԹԻՒՆ ԵՐԵՄԻԱՅ

## ԳԼՈՒԽ Ա

1 Երեմիային ժամանակը ։ 3 ու կոչումը ․ 11 իր մարգարէական տեսիլքները՝ որոնց մէջ նշենիի գաւազան մը ու եռացող կաթսայ մը կը տեսնէ ․ 15 իր ծանր պատգամը Յուդայի դէմ ։ 17 Աստուած կը քաջալերէ զանիկայ՝ խոստանալով որ անոր օգնական պիտի ըլլայ ։

1 Բենիամինի երկիրը՝ Անաթոթի
մէջ եղող քահանաներէն Քեղկիայի որդւոյն Երեմիային խօսքե-
2 րը ․ Որ անոր՝ Տէրոջը խօսքը ե-
ղաւ , Յուդայի թագաւորին Ամոնի որդւոյն Յովսիային օրերը՝
անոր թագաւորութեանը տա-
3 սուերեքերորդ տարին ․ Նաև Յու-
դայի թագաւորին Յովսիային որդւոյն Յովակիմին օրերը՝ մինչև
Յուդայի թագաւորին Յովսիայի որդւոյն Սեդեկիային մետասանե-
րորդ տարւոյն վերջը՝ մինչև Երուսաղէմի գերութիւնը՝ որ հին-
գերորդ ամսուն մէջ եղաւ ։
4 Եւ Տէրոջը խօսքը ինծի եղաւ ,
5 ըսելով ․ Քեզ որովայնի մէջ չըս-
տեղծած՝ քեզ գիտցայ , ու դուն
մօր արգանդէն չելած՝ քեզ
սրբեցի ․ քեզ ազգերուն մարգարէ
6 ըրի ։ Ան ատենը ես ըսի ․ Ո՛հ ,
Տէր Եհովայ , ահա ես խօսիլ չեմ
գիտեր ․ վասն զի ես մանուկ եմ ․
7 Բայց Տէրը ինծի ըսաւ ․ Մի՛ ը-
սեր թէ՝ Ես մանուկ եմ ․ վասն զի
ուր որ քեզ ղրկեմ , պիտի եր-
թաս , ու ինչ որ քեզի պատուի-
8 րեմ , պիտի խօսիս ։ Անոնց ե-
րեսէն մի՛ վախնար ․ քանզի ես
քեզի հետ եմ քեզ ազատելու հա-
մար , կ'ըսէ Տէրը ։
9 Եւ Տէրը իր ձեռքը երկընցուց ,
ու իմ բերնիս դպաւ ․ և Տէրը ին-
ծի ըսաւ ․ Ահա՛ իմ խօսքերս քու
10 բերանդ դրի ։ Նայէ՛ , ես այսօր
քեզ ազգերուն վրայ՝ և թագաւո-
րութիւններուն վրայ կայնեցուցի ,
որ խլես , ու փլցընես , և կորսըն-
ցընես , ու աւրես ․ նաև շինես ու
տնկես ։
11 Եւ Տէրոջը խօսքը ինծի եղաւ՝
ըսելով ․ Ո՛վ Երեմիայ՝ ի՞նչ կը
տեսնես ։ Ու ես ըսի ․ Նշենիի գա-
12 ւազան մը կը տեսնեմ ։ Ան ատե-
նը Տէրը ինծի ըսաւ ․ Աղէկ տե-
սար ․ վասն զի ես իմ խօսքիս հա-
մար՝ զանիկայ կատարելու *պիտի
արթննամ ։
13 Եւ երկրորդ անգամ Տէրոջը խօս-
քը ինծի եղաւ՝ ըսելով ․ Ի՞նչ կը
տեսնես ։ Ու ես ըսի ․ Եռացող
կաթսայ մը կը տեսնեմ՝ որ անոր
երեսը դէպ 'ի հիւսիս է ։
14 Եւ Տէրը ինծի ըսաւ ․ Չարիքը
հիւսիսէն պիտի բորբոքի երկրին
15 բոլոր բնակչացը վրայ ։ Քանզի ա-
հա՛ ես հիւսիսի թագաւորութիւն-
ներուն բոլոր ազգատոհմները պիտի
կանչեմ , կ'ըսէ Տէրը ․ ու պիտի
գան , և ամէն մէկը իր աթոռը Ե-
րուսաղէմի դռներուն առջևը՝ և ա-
նոր շրջակայ պարիսպներուն վրայ՝
ու Յուդայի բոլոր քաղաքներուն
16 վրայ պիտի դնեն ։ Եւ պիտի խօ-
սիմ անոնց իմ դատաստաններս ,
անոնց բոլոր չարութիւններուն հա-
մար ․ վասն զի անոնք զիս թողու-
ցին , և ուրիշ աստուածներու խունկ
ծխեցին , ու իրենց ձեռացը գործ-
քերուն երկրպագութիւն ըրին ։
17 Ուրեմն դուն՝ քու մէջքդ պնդէ՛ ,
ու ելի՛ր , և քեզի բոլոր հրամայածս
անոնց ըսէ՛ ․ անոնց երեսէն մի՛
վախնար ․ չըլլայ որ քեզ անոնց
18 առջևը ամօթով ընեմ ։ Եւ ես ա-
հա՛ այսօր քեզ բոլոր երկրին դէմ՝
այսինքն Յուդայի թագաւորներուն ,
անոր իշխաններուն , անոր քահա-
նաներուն և երկրին ժողովուրդին՝
ամուր քաղաքի պէս , ու երկաթէ
սիւնի պէս , ու պղնձէ պարիսպնե-
19 րու պէս դրի ․ Եւ անոնք քեզի
հետ պիտի պատերազմին , բայց պի-
տի չկրնան քեզ յաղթել ․ վասն
զի ես քեզի հետ եմ՝ քեզ ազատե-
լու համար , կ'ըսէ Տէրը ։

## ԳԼ ․ Բ

1 Աստուած իր առջի բարերարութիւնները յիշելով՝ կը վիճի հրէից հետ՝ իրենց անօրէնի ապստամբութեանը համար , 9 որուն նմանը չկար ․ 14 կը ցուցընէ թէ իրենք են իրենց թշուառութիւններուն պատճառը ։ 20 Յուդայի մեղքերը ։ 31 Անոր յոյսը պարապ կ'ելլէ ։

1 Նու Տէրոջը խօսքը ինծի եղաւ , ը-
2 սելով ․ Գնա՛ , ու Երուսաղէմին
ականջներուն կանչէ՛ ու ըսէ ․ Տէրը

Ն ․ Ք ․ ՎՔ ․ իբր 629

ա Յես ․ իա ․ 19 ։ ա Մն ․ գ ․ 60 ։ Գլ ․ լբ ․ 7 , 8 , 9 ։
բ Գլ ․ իե ․ 3 ։
գ Գլ ․ լթ ․ 2 ։
դ Գլ ․ ծբ ․ 12 , 15 ։
ե դ Թագ ․ իե ․ 8 ։
զ Ես ․ խթ ․ 1 , 5 ։
է Եզ ․ լգ ․ 12 , 17 ։
ը Ղու ․ ա ․ 15 , 41 ։ Գաղ ․ ա ․ 15 , 16 ։
թ Ել ․ դ ․ 10 ։ գ ․ 12 , 30 ։ Ես ․ զ ․ 5 ։
ժ Թու ․ իբ ․ 20 , 38 ։ Մատ ․ իը ․ 20 ։
ի Եզեկ ․ բ ․ 6 ։ գ ․ 9 ։ Հմր 17 ։
լ Ել ․ գ ․ 12 ։ բ Օր ․ լա ․ 6 , 8 ։ Յես ․ ա ․ 5 ։ Գլ ․ ժե ․ 20 ։ Գոր ․ իզ ․ 17 ։ Եբր ․ ժգ ․ 6 ։
խ Ես ․ զ ․ 7 ։
ծ Ես ․ ծա ․ 16 ։ Գլ ․ ե ․ 14 ։
կ գ Թագ ․ ժթ ․ 17 ։
հ Գլ ․ ժը ․ 7 ։ բ Կոր ․ ժ ․ 4 , 5 ։

Ն ․ Ք ․ ՎՔ ․ իբր 629

* Եբր ․ կը հսկեմ ։
ձ Եզեկ ․ ժա ․ 3 , 7 ։ իդ ․ 3 ։
ղ Գլ ․ դ ․ 6 ։ զ ․ 1 ։
ճ Գլ ․ ե ․ 15 ։ զ ․ 22 ։ ժ ․ 22 ։ իե ․ 9 ։
մ Գլ ․ լթ ․ 3 ։ իգ ․ 10 ։
յ բ Օր ․ իը ․ 20 ։ Գլ ․ ժէ ․ 13 ։
ն դ Թագ ․ ժբ ․ 46 ։ դ Թագ ․ դ ․ 29 ։ թ ․ 1 ։ Յոբ ․ լը ․ 3 ։ Ղու ․ ժբ ․ 35 ։ ա Պետ ․ ա ․ 13 ։
շ Ել ․ գ ․ 12 ։ Հմր 8 ։ Եզեկ ․ բ ․ 6 ։
ո Ես ․ ծ ․ 7 ։ Գլ ․ զ ․ 27 ։ ժե ․ 20 ։
չ Հմր 8 ։

/ այսպէս կ'ըսէ . Անապատին մէջ
ան չցանուած երկիրը՝ իմ ետեւէս
եկած ատենդ՝ քու մանկութեանդ
քաղցրութիւնը , քու հարսնու-
թեանդ սէրը քեզի համար յիշեցի ։
3 Իսրայէլը՝ Տէրոջը սուրբ էր . ա-
նոր արմտեաց երախայրին էր .
ամէն անոնք որ զանիկայ կ'ուտէին,
յանցաւոր կ'ըլլային . անոնց վրայ
չարիք կը հասնէր , կ'ըսէ Տէրը ։
4 Տէրոջը խօսքը մտիկ ըրէք՝ ո՛վ Յա-
կոբի տունը , ու Իսրայէլի տանը
5 բոլոր ազգատոհմները . Տէրը այս-
պէս կ'ըսէ . Ձեր հայրերը ի՞նչ
անիրաւութիւն գտան իմ վրաս ,
որ ինծմէ հեռացան , և ունայնու-
թեան ետեւէ երթալով՝ ունայն ե-
6 ղան . Ու չըսին թէ՝ Ո՞ւր է Տէրը՝
որ մեզ Եգիպտոսի երկրէն հանեց .
որ մեզ անապատէն պտըտցուց ,
ամայութեան և փոսերու երկրէն ,
չորութեան և մահուան ստուերի
երկրէն , անանկ երկրէ մը՝ ուսկից
որ մարդ չէր անցներ , ու հոն մարդ
7 չէր բնակեր ։ Եւ ձեզ բարեբեր
երկիր մը բերի , որ անոր պտուղը
ու բարիքը ուտէք . և դուք մը-
տաք , ու իմ երկիրս անմաքուր
ըրիք , և իմ ժառանգութիւնս
8 պղծեցիք ։ Քահանաները չըսին
թէ՝ Տէրը ո՞ւր է , ու օրէնաց վար-
դապետները զիս չճանչցան , և
հովիւները ինծմէ ապստամբեցան ,
ու մարգարէները Բահաղով մար-
գարէութիւն ըրին , և անօգուտ
9 բաներու ետեւէ գացին ։ Ասոր հա-
մար ձեզի հետ տակաւին պիտի
վիճիմ՝ կ'ըսէ Տէրը . ու ձեր որ-
դւոյը որդիներուն հետ պիտի վի-
10 ճիմ ։ Վասն զի Կիտացւոց կղզ-
զիները անցէ՛ք , ու նայեցէ՛ք ։ Եւ
Կեդարը մարդ խրկեցէք , ու աղէկ
հասկցէ՛ք , և տեսէ՛ք թէ այսպէս
11 բան մը եղե՞ր է . Միթէ մէկ ազգ
մը իր աստուածները փոխե՞ց ,
թէև անոնք Աստուած չեն . բայց
իմ ժողովուրդս իր Փառքը՝ ան-
12 օգուտ բանի հետ փոխեց ։ Ո՛վ
երկինք՝ ասոր վրայ զարմացէ՛ք .
ապշեցէ՛ք ու խիստ ոսկացէ՛ք ,
13 կ'ըսէ Տէրը . Վասն զի իմ ժողո-
վուրդս երկու չարութիւն գոր-
ծեց . զիս՝ կենաց ջուրին աղ-
բիւրը թողուցին , և իրենց գու-
բեր փորեցին , ծակոտ գուբեր՝ որ
14 չեն կրնար ջուր պահել ։ Միթէ
Իսրայէլը ծառա՞յ է , կամ " ծա-
ռայի զաւա՞կ " է . անիկայ ինչո՞ւ
համար յափշտակութեան մատ-
15 նուեցաւ . Անոր վրայ առիւծի
կորիւնները գոչեցին , ու ձայներնին
հանեցին , և անոր երկիրը աւերակ
ըրին . անոր քաղաքները այրեցան ,
16 անբնակ եղան ։ Մեմփացւոց ու
Տափնացւոց տղաքները անդամ՝
քու գլխուդ գագաթը կոտրեցին ։
17 Չէ՞ որ ասիկայ դուն քու վրադ
բերիր քու Տէր Աստուածդ ձգե-
լով , երբոր զանիկայ ճամբուն մէջ
քեզի առաջնորդութիւն կ'ընէր ։
18 Եւ հիմա դուն Եգիպտացւոց
ճամբան ի՞նչ բան ունիս , որ Սի-
ովրի ջուրը խմելու համար . կամ
Ասորեստանի ճամբան ի՞նչ բան
ունիս , որ Գետին ջուրը խմե-
19 լու համար ։ Քու չարութիւ-
նըդ քեզ պիտի խրատէ , ու քու
անհաւատարմութիւններդ քեզ
պիտի յանդիմանեն . արդ՝ գիտ-
ցի՛ր ու տե՛ս թէ գէշ ու դառն բան
մըն է , որ քու Տէր Աստուածդ կը
թողուս , և քու վրադ իմ վախս
չկայ , կ'ըսէ զօրաց Եհովայ Տէրը ։
20 Վասն զի քու լուծդ շատոնցմէ
† կոտրեցիր , քու կապերդ փրը-
ցուցիր , ու ըսիր . Ծառայութիւն
չեմ ըներ . այնպէս որ ամէն
բարձր բլուրի վրայ , և ամէն կանանչ
ծառի տակ ծռեցար պոռնկու-
21 թիւն ըրիր ։ Ու ես քեզ ընտիր
որթ , բոլորովին հարազատ
սերմ տնկեր էի . և դուն ի՞նչպէս
վայրենի որթի անպիտան ճիւղե-
22 րու պէս եղար ինծի ։ Թէ որ բո-
րակով լուացուիս , ու շատ օճառ
ալ գործածես , քու անօրէնու-
թիւնդ առջևս բիծի պէս կը մնայ ,
23 կ'ըսէ Տէր Եհովան ։ Ի՞նչպէս կըր-
նաս ըսել . Ես չպղծուեցայ . Բահա-
ղին ետեւէն չգացի . Հովիտին մէջ
քու ճամբադ նայէ , ինչ ըրածդ
գիտցի՛ր , ո՛վ խոտորնակ ճամբաներ
պտըտող արագընթաց տաճիկ
24 ուղտ ։ Անապատը սովորած վայ-
րենի էշը՝ որ իր հոգւոյն ցանկու-
թեամբը օդը կը ծծէ , իր ցանկու-
թենէն ո՞վ կրնայ ետ դարձընել .
զանիկայ ամէն փնտռողները չեն
յոգնիր . զանիկայ իր ամսուն մէջ
25 կը գտնեն ։ Ոտքդ մերկութենէ՝
ու կոկորդդ ծարաւէն ե՛տ պահէ .
բայց դուն ըսիր . ‡ Անկարելի է " ,
չըլլար . վասն զի օտարները սիրեր
եմ , ու անոնց ետեւէն պիտի եր-
թամ ։
26 Ինչպէս որ գողը բռնուած ա-
տենը կ'ամչնայ , անանկ ալ ամըչ-
ցան Իսրայէլի տունը՝ իրենք , իրենց
թագաւորները ու իշխանները , և
քահանաները ու մարգարէները .
27 Որոնք փայտին կ'ըսեն . Դուն իմ
հայրս ես , ու քարին՝ Դուն զիս
ծնար . քանզի ինծի կռնակ դար-
ձուցին , և ոչ թէ երես . բայց ի-
րենց ձախորդութեան ժամանակը
կ'ըսեն . Ելի՛ր , ու մեզ ազատէ ։

Ն. Ք. Գ. Ք. Իրր 629

բ Օր. բ. 7։
Եզեկ. ժզ. 8, 22, 60։ Իգ. 8, 8, 19։ Ովս. բ. 15։
Եւ. ժթ. 5, 6։
Յակ. ա. 18։ Յայտ. ժդ. 4։
Գւ. ժբ. 14։ ծ. 7։
Ես. ե. 4։ Միք. զ. 3։
Դ Թագ. ժէ. 15։ Յովն. բ. 8։
Ես. կդ. 9, 11, 13։ Ովս. ժդ. 4։
բ Օր. ը. 15։ լբ. 10։
Թիւ. ժգ. 28։ ժդ. 7, 8։ բ Օր. ը. 7, 8, 9։
Ղև. ժը. 25, 27, 28։ Թուոց լե. 33, 34։ Սաղ. հը. 58, 59։ ճզ. 38։ Գլ. գ. 1։ ժզ. 18։
Մաղ. բ. 6, 7։ Հռովմ. բ. 20։
Գլ. իգ. 13։
Հմր 11։ Ամբ. բ. 18։
Եզեկ. ի. 35, 36։ Միք. զ. 2։
Եւ. ի. 5։ Ղև. ի. 5։
Միք. դ. 5։
Սաղ. ճժե. 4։ Ես. լէ. 19։ Գլ. ժզ. 20։
Սաղ. ճզ. 20։ Հռովմ. ա. 23։
Հմր 8։
Ես. ա. 2։ Գլ. զ. 19։
Սաղ. լզ. 9։ Գլ. ժէ. 13։ ժը. 14։ Յովհ. դ. 14։
Տե՛ս Եւ. դ. 22։
Եբր. ընդոծի՞ն
Ես. ա. 7։ Գլ. դ. 7։

Ն. Ք. Գ. Ք. Իրր 629

Գլ. խդ. 7, 8, 9։
Գլ. դ. 18։
բ Օր. լբ. 10։
Ես. լ. 1, 2։
Ցես. ժզ. 3։
Ես. գ. 9։ Ովս. ե. 5։
† Կամ՝ կոտ- րեցի ։ քու կապանքնե- րըդ փրցու- ցի , ու դուն ըսիր . Օրէ- նազանց չեմ ըլլալ . ասկայն
բ Օր. ժբ. 2։ Ես. ծէ. 5, 7։ Գլ. գ. 6։
Եւ. լդ. 15, 16։
Եւ. ժե. 17։ Սաղ. խդ. 2։ ձ. 8։ Ես. ե. 1։ ՃԷ։ կ. 21։ Մատ. իա. 33։ Մար. ժբ. 1։ Ղուկ. ի. 9։
բ Օր. լբ. 32։ Ես. ա. 21։ ե. 4։
Յոբ. թ. 30։
բ Օր. լբ. 34։ Յոբ. ժդ. 17։ Ովս. ժգ. 12։
Առակ. լ. 12։
Գլ. է. 31։
Յոբ. լթ. 5։ ՃԷ։ Գլ. ժդ. 6։
Գլ. ժը. 12։
Եբր. յոյս չկայ ։
բ Օր. լբ. 16։ Գլ. գ. 13։
Դատ. ժ. 10։ Սաղ. հը. 34։ Եսայ. իզ. 16։

Ն. Ք. Գ֊Ք.
Իրր 629

ե Բ Օր. լբ. 37 ։ Դատ. ժ. 14 ։
զ Ես. խե. 20 ։
 է Գլ. ժա. 13 ։
ը Հմր 23, 35 ։
թ Ես. ա. 5 ։ Թ. 13 ։ Գլ. ե. 3 ։
ժ Բ Մն. լզ. 16 ։ Նեեմ. Թ. 26 ։ Մատ. իգ. 29, 31 ։ Գործ. է. 52 ։ Ա Թես. բ. 15 ։
ի Հմր 5 ։
լ Սաղ. ժբ. 4 ։
խ Բ Օր. լբ. 15 ։
ծ Սաղ. ճզ. 21 ։ Գլ. ժգ. 25 ։ Ովս. ը. 14 ։
կ Սաղ. ճզ. 38 ։ Գլ. ժԹ. 4 ։
հ Հմր 23, 29 ։
ձ Հմր 9 ։
ղ Առակ. իը. 13 ։ ա Յոհ. ա. 8, 10 ։
ճ Հմր 18 ։ Գլ. լա. 22 ։ Ովս. ե. 13 ։ ժբ. 1, 2 ։
մ Ես. լ. 3 ։ Գլ. լէ. 7 ։
յ Բ Մն. իը. 16, 20, 21 ։
ն Բ Թագ. ժգ. 19 ։

28 Եւ ուր են քու աստուածներդ՝
որոնք քեզի շինեցիր . Թէ որ քու
ձախորդութեանդ ժամանակը քեզ
կրնան ազատել, Թող ելլեն . վասն
զի կքու աստուածներդ՝ ով Յու-
դա՛ քու քաղաքներուդ Թուոյն
29 չափ եղան ։ Ըինչո՞ւ համար ինծի
հետ կը վիճիք . դուք ամէնքդ ինծ-
մէ ապստամբեցաք, կ'ըսէ Տէրը ։
30 Թ Պարապ տեղը ձեր տղաքը ծեծե-
ցի . անոնք խրատ չառին . ժ ձեր
սուրը՝ ապականարար առիւծի պէս
ձեր մարգարէները կերաւ ։
31 Ո՛վ ազգ՝ Տէրոջը խօսքին նայե-
ցէք . ի Միթէ ես անապատ եղայ
Իսրայէլին, կամ մութ երկիր մը .
իմ ժողովուրդս ինչո՞ւ կ'ըսեն .
լ Մենք ինքնագլուխ կը պտըտինք .
32 խ Մէյմըն ալ քեզի չենք գար ։ Մի-
Թէ կոյսը իր զարդերը, կամ հարսը
իր գօտին կը մոռնա՞յ . բայց իմ
ժողովուրդս ծ անթիւ օրեր զիս մոռ-
33 ցաւ ։ Սէր փնտռելու համար՝ ին-
չո՞ւ քու ճամբադ աղէկ կը ցուցը-
նես, անանկ որ քու ճամբաներդ
չար կիներուն ալ սորվեցուցիր ։
34 Նաեւ քու քղանցքներուդ վրայ՝
կ անմեղ աղքատաց հոգիներուն
արիւնները գտնուեցաւ . զանոնք
պատառուկ տեղուանք չգտայ, հա-
պա ասս ամէն բաներուն վրայ ։
35 հ Բայց դուն կ'ըսես Թէ՝ Անմեղ
ըլլալուս համար՝ անոր բարկու-
թիւնը անշուշտ ինծմէ պիտի
դառնայ ։ Ահա ձ ես քեզի հետ
դատ պիտի վարեմ՝ ղ Ես մեղք չը-
36 գործեցի ըսելուդ համար ։ ճ Ինչո՞ւ
ճամբադ փոխելով՝ այսչափ կը
թափառիս . մ դուն Եգիպտոսէն ալ
պիտի ամչնաս, յ ինչպէս որ Ասո-
37 րեստանէն ամչցար ։ Դուն ասկէ
ալ պիտի ելլես՝ ն ձեռքերդ գլխուդ
վրայ դրած . քանզի Տէրը քու յու-
սերդ մերժեց, ու անոնցմով յա-
ջողութիւն պիտի չունենաս ։

## ԳԼ. Գ

1 Աստուծոյ մեծ ողորմութիւնը Յուդային դար-
ձելի պոռնկութիւններու ետեւէ եղած ատենը ։
6 Յուդան Իսրայէլէն աւելի չար կ'ըլլայ ։ 12
Աւետարանին խոստմունքները դէպ 'ի ապաշ-
խարողներուն ։ 20 Իսրայէլը յանդիմանուե-
լով, ու Աստուծմէ կանչուելով՝ իր մեղքերը
կը խոստովանի ։

ա Բ Օր. իդ. 4 ։
բ Գլ. բ. 7 ։
գ Գլ. բ. 20 ։ Եզեկ. ժզ. 25, 28, 29 ։
դ Գլ. դ. 1 ։ Զաք. ա. 3 ։
ե Տես Բ Օր. ժբ. 2 ։ Գլ. բ. 20 ։

1 Կ'ըսեն Թէ՝ Մէկ մարդ մը Թէ որ
իր կնիկը արձակէ, և անիկայ՝
անոր քովէն երթայ ու մէկ ուրիշ
էրիկ մը առնէ, ա անիկայ մէյմըն ալ
ան կնկանը կը դառնա՞յ . բ ան եր-
կիրը բոլորովին չը՞պղծուիր . Բայց
դուն՝ գ բեւ շատ հոմանիներու հետ
շնութիւն ըրիր, դ նորէն ինծի
2 դարձիր՝ կ'ըսէ Տէրը ։ Աչքերդ
ե բլուրներուն վերցուր, ու նայէ՛,
ո՞ւր պոռնկութիւն չըրիր . զ դուն
անոնց համար ճամբաներուն վրայ
նստար անապատի Արաբացիին
պէս, է և քու պոռնկութիւններովդ
ու չարութիւնովդ երկիրը պղծե-
3 ցիր ։ Ուստի ը անձրեւները խափա-
նեցան, ու վերջի անձրեւը չեղաւ .
սակայն Թ քու ճակատդ պոռնիկի
ճակատին պէս եղաւ . ամօթը մէկդի
4 ձգեցիր ։ Միթէ ասկէ ետքը ինծի
պիտի չաղաղակե՞ս՝ ըսելով . Ո՛վ
Հայր իմ՝ դուն ես ժ իմ մանկու-
5 թեանս առաջնորդը ։ ի Միթէ յա-
ւիտեան պիտի բարկանա՞յ, կամ իր
սրտմտութիւնը միշտ պիտի պահէ՞ .
ահա դուն ասանկ խօսեցար, և քու
կարողութեանդ չափ չարութիւն
գործեցիր ։
6 Ու Յովսիա Թագաւորին օրերը
Տէրը ինծի ըսաւ . լ Ապստամբ Իս-
րայէլին ըրածը տեսա՞ր . անիկայ
խ ամէն բարձր լեռան վրայ, ու ամէն
կանանչ ծառի տակ գնաց, և հոն
7 շնութիւն ըրաւ ։ ծ Ու անիկայ աս
ամէն բանը ընելէն ետքը՝ ըսի .
Ինծի դարձիր . բայց անիկայ չը-
դարձաւ . և անոր ուխտադրուժ
8 կ քոյրը Յուդա ասիկա տեսաւ ։ Ու
երբոր հ ապստամբ Իսրայէլին շնու-
թիւն ընելուն պատճառաւը՝ ձ զա-
նիկայ արձակեցի, և արձակման
թուղթը անոր տուի, տեսայ որ
ղ անոր ուխտադրուժ քոյրը Յուդա
չվախցաւ, հապա գնաց ինքն ալ
9 շնութիւն ըրաւ ։ Ու եղաւ որ՝ ա-
նիկայ իր շնութեան լրբութիւնովը
ճ երկիրը պղծեց, քանզի մ քարի ու
10 փայտի հետ շնութիւն ըրաւ ։ Այ-
սու ամէնայնիւ անոր ուխտադրուժ
քոյրը Յուդան ալ յ բոլոր սրտովը
ինծի չդարձաւ, հապա ստութեամբ
11 դարձաւ, կ'ըսէ Տէրը ։ Եւ Տէրը
ինծի ըսաւ . ն Ապստամբ Իսրայէլը
ուխտադրուժ Յուդայէն աւելի զին-
12 քը արդարացուց ։ Գնա՛ աս խօս-
քերը Ն դէպ 'ի հիւսիս կանչելով
ըսէ՛ . Դարձի՛ր ով ապստամբ Իս-
րայէլ՝ կ'ըսէ Տէրը . իմ բարկու-
թիւնս ձեր վրայ չեմ թափեր .
քանզի ես ո ողորմած եմ, կ'ըսէ
Տէրը . յաւիտեան ոխ չեմ պահեր .
13 չ Միայն թէ քու անօրէնութիւնդ
ճանչցի՛ր, որ քու Տէր Աստուծմէդ
ապստամբեցար, և պ ամէն կանանչ
ծառի տակ՝ ջ քու ճամբաներդ ռ օ-
տարներուն տարածեցիր . ու իմ
խօսքիս հնազանդութիւն չըրիք,
14 կ'ըսէ Տէրը ։ Դարձէ՛ք ով ապստամբ
որդիք, կ'ըսէ Տէրը . քանզի ս ձեր
վրայ տիրողը ես եմ, և վ ձեզ պիտի
առնեմ՝ տ մէկ քաղաքէ մէկ հոգի,
ու մէկ ազգատոհմէ երկու հոգի, ու
15 ձեզ Սիօն պիտի բերեմ . Եւ ձեզի՝

Ն. Ք. Գ֊Ք.
Իրր 629

զ Ծն. լը. 14 ։ Առակ. իգ. 28 ։ Եզեկ. ժզ. 24, 25 ։
է Գլ. բ. 7 ։ Հմր 9 ։
ը Ղև. իզ. 19 ։ Բ Օր. իը. 23, 24 ։ Գլ. Թ. 12 ։ ժդ. 4 ։
Թ Գլ. ե. 3 ։ զ. 15 ։ ը. 12 ։ Եզեկ. գ. 7 ։ Սոփ. գ. 5 ։
ժ Գլ. բ. 2 ։ Ովս. բ. 15 ։

Իրր 612

ի Սաղ. հէ. 7 ։ 8 ։ ճզ. 9 ։ Ես. ծէ. 16 ։ Հմր 12 ։
լ Հմր 11, 14 ։ Գլ. է. 24 ։
խ Գլ. բ. 20 ։
ծ Դ Թագ. ժէ. 13 ։
կ Եզեկ. ժգ. 46 ։ իդ. 2, 4 ։
հ Եզեկ. իգ. 9 ։
ձ Դ Թագ. ժէ. 6, 18 ։
ղ Եզեկ. իգ. 11 ։ 8 ։
ճ Գլ. բ. 7 ։ Հմր 2 ։
մ Գլ. բ. 27 ։
յ Բ Մն. լդ. 33 ։ Ովս. է. 14 ։
ն Եզեկ. ժզ. 51 ։ իգ. 11 ։
Ն Դ Թագ. ժէ. 6 ։
ո Սաղ. ձզ. 15 ։ ճդ. 8, 9 ։ Հմր 5 ։
չ Ղև. իզ. 40 ։ 8 ։ Բ Օր. լ. 1, 2 ։ 8 ։ Առակ. իը. 13 ։
պ Բ Օր. ժբ. 2 ։
ջ Հմր 2 ։ Եզեկ. ժզ. 15, 24, 25 ։
ռ Գլ. բ. 25 ։
ս Կամ Բեեղձեղ մերժեցի . բայց
տ Հռովմ. ժա. 5 ։

Ն. Ք. Գ.Ք. Իըր 612

Գլ. իգ. 4. Եզեկ. լդ. 23. Եփե. դ. 11.
Գոր. ի. 28.
Ես. կե. 17.
Ես. կ. 9.
Գլ. ժա. 8.
Տես Ես. ժա. 13. Եզեկ. լէ. 16-22. Ովս. ա. 11.
Հմր 12. Գլ. լա. 8.
Ամով. թ. 15.
Սաղ. ճզ. 24. Եզեկ. ի. 6. Դան. ը. 9. ժա. 16, 41, 45.
Ես. կգ. 16.
Ես. խը. 8. Գլ. ե. 11.
Ես. ժե. 2.
Հմր 14. Ովս. ժգ. 1.
Ովս. գ. 1. ժդ. 4.
Սաղ. ճիա. 1, 2.
Սաղ. դ. 8.
Գլ. ժա. 13. Ովս. թ. 10.
Եզր. թ. 7.
Գլ. իբ. 21.

իմ սրտիս յարմար հովիւներ պի-
տի տամ, ու ձեզ գիտութեամբ և
16 հանճարով պիտի հովուեն ։ Ու
երբոր դուք ան օրերը երկրի վրայ
շատնաք ու աճիք, կ'ըսէ Տէրը,
մէյմըն այլ Տէրոջը ուխտին տապա-
նակը պիտի չըսեն. և անիկայ մտ-
քերնին մտքը պիտի չգայ, ու զանիկայ
պիտի չյիշեն, և անոր այցելութիւն
պիտի չընեն. ու ան բաները մէյմըն
17 ալ պիտի չըլլայ ։ Ան ատենը Ե-
րուսաղէմը՝ Տէրոջը աթոռը պիտի
անուանեն. և ամէն ազգերը հոն՝
Տէրոջը անուանը համար Երուսա-
ղէմ պիտի ժողվուին. և մէյմըն
ալ իրենց չար սրտին կամակորու-
թեանը ետևէն պիտի չերթան ։
18 Ան օրերը Յուդայի տունը Իսրա-
յէլի տանը հետ պիտի երթայ. ու
միասին մէկտեղ հիւսիսի երկրէն՝
անոնց հայրերուն ժառանգութիւն
19 տուած երկիրս պիտի գան ։ Բայց
ես ըսի. Քեզ ի՞նչպէս որդւոց
մէջ դնեմ, և քեզի զան ցանկալի
երկիրը՝ ազգաց խիստ գեղեցիկ ժա-
ռանգութիւնը տամ. ու ըսի. Ին-
ծի՝ Հա՛յր իմ՝ պիտի աղաղակես,
և ինծի հետևելէն ետ պիտի չդառ-
20 նաս ։ Իրաւցընէ՝ ո՛վ Իսրայէլի
տունը՝ ինչպէս որ մէկ կնիկ մը իր
էրկանը անհաւատարիմ կ'ըլլայ,
այնպէս ալ դուք ինծի անհաւա-
տարիմ եղաք, կ'ըսէ Տէրը ։
21 Բլուրներուն վրայ ձայն մը
լսուեցաւ, Իսրայէլի որդւոցը աղա-
չանքի ու լացի ձայնը. վասն զի ա-
նոնք իրենց ճամբան խոտորցուցին.
իրենց Տէր Աստուածը մոռցան ։
22 Ո՛վ ապստամբ որդիք՝ դարձէ՛ք,
ես ձեր ապստամբութիւնները կը
բժշկեմ ։
Ահա մենք քեզի կու գանք. քան-
զի դուն մեր Տէր Աստուածն ես ։
23 Յիրաւի բլուրներուն և լերանց
բազմութեանը յուսալը պարապ
բան է. Հապա Իսրայէլի փրկու-
թիւնը մեր Տէր Աստուծմէն է ։
24 Վասն զի մեր մանկութենէն 'ի վեր
մեր հայրերուն վաստակը՝ անոնց
հօտերը, և արջառները, անոնց
տղաքները, ու աղջիկները ամօթը
25 կերաւ ։ Մեր ամօթովը կը պառ-
կինք, ու մեր անարգանքը մեզ կը
ծածկէ. վասն զի մեր մանկութե-
նէն մինչև աս օրս՝ թէ մենք և թէ
մեր հայրերը՝ մեր Տէր Աստուծոյն
դէմ մեղք գործեցինք, ու մեր
Տէր Աստուծոյն ձայնին հնազան-
դութիւն չըրինք ։

## ԳԼ. Դ

1 Աստուած իր խոստմունքովը կը կանչէ Իսրայէլը. 3 կը յորդորէ Յուդան որ ապաշխարէ՝ յիշելով իր երկիւղալի դատաստանները ։ 19 Յուդայի թշուառութիւններուն վրայ ցաւալի ողբ մը ։

1 Թէ որ դառնաս՝ ո՛վ Իսրայէլ,
կ'ըսէ Տէրը, ինծի պիտի դառ-
նաս. ու թէ որ քու պղծութիւն-
ներդ իմ առջևէս վերցընես, ալ
2 թափառական պիտի չըլլաս ։ Եւ
ճշմարտութեամբ, իրաւամբ ու
արդարութեամբ երդում պիտի
ընես թէ՝ Տէրը կենդանի է. և
ազգերը անով պիտի օրհնուին, ու
3 անով պիտի պարծին ։ Վասն զի
Տէրը Յուդայի ու Երուսաղէմի
մարդիկներուն այսպէս կ'ըսէ.
Չմշակուած երկիրնե՛ր հերկեցէք
ձեզի. ու փուշերու մէջ մի՛ ցա-
4 նէք ։ Ո՛վ Յուդայի մարդիկներ, ու
Երուսաղէմի բնակիչներ, Տէրո՛ջը
թլփատուեցէք, և ձեր սրտին
անթլփատութիւնը վերցուցէ՛ք. որ
չըլլայ թէ իմ բարկութիւնս ձեր
չար գործքերուն համար՝ կրակի
պէս բորբոքի ու այրէ, և մարող
մը չըլլայ ։
5 Յուդայի մէջ պատմեցէ՛ք, ու
Երուսաղէմի մէջ քարոզեցէ՛ք, ու
ըսէ՛ք. Երկրի վրայ փո՛ղ հնչեցու-
ցէք. բարձրաձայն աղաղակեցէ՛ք,
ու ըսէ՛ք. Ժողվուեցէ՛ք, ու պա-
րըսպաւոր քաղաքները մտնենք ։
6 Դէպ 'ի Սիոն դրօշ վերցուցէք.
քաշուեցէ՛ք, մի՛ կայնիք. վասն զի
ես չարիք ու մեծ կոտորած պիտի
7 բերեմ հիւսիսէն ։ Առիւծը իր
*որջէն ելաւ, և ազգերը ջարդողը
իր տեղէն ելաւ՝ ճամբայ ինկաւ,
որ քու երկիրդ աւերակ ընէ. քա-
ղաքներդ պիտի փլչին, ու անոնց
8 մէջ բնակիչ պիտի չգտնուի ։ Ասոր
համար քուրձե՛ր հագէ՛ք, և սուգ
ընելով ողբացէ՛ք. վասն զի Տէրոջը
սաստիկ բարկութիւնը մեզմէ չդար-
9 ձաւ ։ Ու պիտի ըլլայ ան օրը՝ կ'ըսէ
Տէրը, որ թագաւորին սիրտը ու
իշխաններուն սիրտը պիտի հատնի.
և քահանաները պիտի ապշին, ու
մարգարէները պիտի հիանան ։
10 Ան ատենը ըսի. Աւա՜ղ, ո՛վ
Տէր Եհովայ. Յիրաւի դուն աս
ժողովուրդը ու Երուսաղէմը խա-
բելով խաբեցիր, ըսելով. Ձեզի
խաղաղութիւն պիտի ըլլայ. և ա-
հա սուրը մինչև անոնց հոգին հասաւ ։
11 Ան ատենը աս ժողովուրդին ու
Երուսաղէմին պիտի ըսուի. Այ-
րող հով մը անապատին բլուրներէն
կը գայ՝ իմ ժողովուրդիս աղջկանը
ճամբուն մէջ, չէ՛ թէ հոսելու հա-
մար, ոչ ալ մաքրելու համար ։
12 Ասկէ սաստիկ հով մը պիտի գայ
ինծի. հիմա ես ալ անոնց հետ
դատաստաններով պիտի խօսիմ ։

Ն. Ք. Գ.Ք. Իըր 612

Գլ. գ. 1. 22. Յովէլ. բ. 12.
Ես. խը. 1. Զաք. ը. 8.
Օր. ժ. 20. Ես. խե. 23. կե. 16. Տես գլ. ե. 2.
Ծն. իբ. 18. Սաղ. հբ. 17. Գաղ. գ. 8.
Ես. խե. 25. Ա Կոր. ա. 31.
Ովս. ժ. 12.
Մատ. ժգ. 7, 22.
Օր. ժ. 16. լ. 6. Գլ. թ. 26. Հռով. բ. 28, 29. Կող. բ. 11.
Գլ. ը. 14.
Գլ. ա. 13, 14, 15. զ. 1, 22.
Դ Թագ. իդ. 1. Գլ. ե. 6. Դան. է. 4.
* Եբր. մացառէն
Գլ. իե. 9.
Ես. ա. 7. Գլ. բ. 15.
Ես. իբ. 12. Գլ. զ. 26.
Եզեկ. ժգ. 9. բ Թես. բ. 11.
Գլ. ե. 12. ժդ. 13.
Գլ. ծա. 1. Եզեկ. ժէ. 10. Ովս. ժգ. 15.
Գլ. ա. 16.

13 Ահա անիկայ ամպերու պէս պի-
տի ելլէ, և անոր կառքերը մրրի-
կի պէս . անոր ձիերը արծիւնե-
րէն արագընթաց են . վա՜յ մեզի՝
14 որ կ'աւրուինք ։ Ո՛վ Երուսա-
ղէմ՝ սիրտդ չարութենէ լուա,
որպէս զի փրկութիւն գտնես . քու
չար խորհուրդներդ՝ մինչև ե՞րբ
15 սրտիդ մէջը պիտի մնան ։ Վասն
զի ձայն մը Դանէն լուր կը բերէ,
ու Եփրեմի լեռնէն թշուառու-
16 թիւն լսել կու տայ ։ Ազգերուն յիշեցէք . ահա Երուսաղէ-
մին վրայով պատմեցէք, որ հե-
ռաւոր երկրէ պաշարողներ կու
գան, և Յուդայի քաղաքներուն
վրայ իրենց ձայնը կ'արձակեն ։
17 Անոր չորս կողմը ագարակի պա-
հապաններու պէս պիտի պաշա-
րեն . վասն զի անիկայ ինծմէ
ապստամբեցաւ, կ'ըսէ Տէրը ։
18 Աս բաները՝ քու ճամբաներդ ու
գործքերդ բերին քու վրադ . ա-
սիկայ քու չարութիւնդ է, վասն
զի դառն է . որովհետև մինչև քու
սիրտդ հասաւ ։
19 Փո՜րս, փո՜րս . մինչև սրտիս
*շտեմարանները ցաւ կը զգամ .
սիրտս իմ ներսի դին կը խռովի,
չեմ կրնար լռել . քանզի դուն՝ ո՛վ
իմ անձս, փողին ձայնը, պատե-
20 րազմին աղաղակը լսեցիր ։ Կո-
տորած կոտորածի վրայ կը կան-
չուի, վասն զի բոլոր երկիրը կոր-
ծանեցաւ . վրաններս յանկար-
ծակի՝ ու խորաններս մէկէն կոր-
21 ծանեցան . Մինչև ե՞րբ դրօշը պի-
տի տեսնեմ, ու փողին ձայնը պիտի
լսեմ ։
22 Քանզի իմ ժողովուրդս յիմար
է, զիս չճանչցան . անոնք անմիտ
զաւակներ են, ու անոնց քովը
հանճար չկայ . անոնք չարու-
թիւն ընելու իմաստուն են, բայց
աղէկութիւն ընել չեն գիտեր ։
23 Երկրի վրայ նայեցայ, և ահա
անձև ու պարապ էր . երկինքը
24 նայեցայ, ու լոյս չունէր ։ Լեռ-
ներուն նայեցայ, և ահա կը դո-
ղային, ու ամէն բլուրները կը
25 սարսէին ։ Նայեցայ, և ահա մարդ
մը չկար, ու երկինքի բոլոր թռ-
26 չունները փախած էին ։ Նայե-
ցայ, և ահա պտղաբեր երկիրը ա-
նապատ եղած էր, ու ամէն քա-
ղաքները Տէրոջը երեսէն՝ անոր
սաստիկ բարկութեանը երեսէն
փլած էին ։
27 Վասն զի Տէրը այսպէս կ'ըսէ .
Բոլոր երկիրը պիտի աւրուի . բայց
բոլորովին [illegible] պիտի չընեմ ։
28 Ասոր վրայ երկիրը սուգ պիտի
բռնէ, ու վերէն երկինքը պիտի
խաւարի . վասն զի խօսեցայ, որո-
շեցի, և պիտի չզղջամ, ու անկէ
29 ետ պիտի չդառնամ ։ Ձիաւորնե-
րուն և աղեղնաւորներուն ձայնէն
բոլոր քաղաքը պիտի փախչի . ա-
նոնք թանձրախիտ անտառներու
մէջ պիտի մտնեն, ու ապառաժ-
ներու վրայ պիտի ելլեն . ամէն
քաղաքները պիտի թողուին, և
անոնց մէջ մարդ պիտի չբնակի ։
30 Ու դուն ո՛վ աւրուած, ի՞նչ պի-
տի ընես . թէև կարմիրներ հագ-
նիս, քեզ ոսկի զարդերով զարդա-
րես, ու աչքերուդ վրայ շատ
ծարոյր ալ դնես", պարապ տեղը
կը զարդարուիս . [illegible] հոմանի-
ներդ քեզ մերժեցին, ու քու հոգիդ
31 կը փնտռեն ։ Քանզի ձայն մը
լսեցի ծննդական կնոջ [illegible] պէս,
իր անդրանիկը ծնանողին եր-
կանցը պէս, Սիոնի աղջկանը ձայ-
նը՝ որ կը հառաչէ, ու ձեռքերը
բանալով՝ կ'ըսէ . Հիմա վա՜յ ինծի .
քանզի սպաննողներուն պատճա-
ռաւը հոգիս մարեցաւ ։

## ԳԼ․ Ե

1 Աստուծոյ դատաստանները՝ որ Հրէից վրայ պիտի գար իրենց կամակորութեանը համար, 7 իրենց շնութեանը համար, 10 իրենց ամբարշտութեանը համար, 19 զԱստուած անարգելնուն համար, 25 և իրենց ապականութեանը համար՝ թէ՛ քաղաքական բաներու մէջ 30 և թէ եկեղեցական ։

1 Երուսաղէմի փողոցներուն մէջ պը-
տըտեցէք, ու հիմա նայեցէք,
ու գիտցէք, ու անոր հրապարակ-
ներուն մէջ փնտռեցէք . թէ որ
մարդ մը կրնաք գտնել, թէ որ
իրաւունք ընող, ճշմարտութիւն
փնտռող մը կայ, ես ան [illegible]
2 թողութիւն ընեմ ։ Ու թէև
Տէրը կենդանի է՝ կ'ըսեն, բայց
ստութեամբ երդում կ'ընեն ։
3 Ո՛վ Տէր՝ միթէ քու աչքերդ
ճշմարտութեան չե՞ն նայիր . զա-
նոնք ծեծեցիր, բայց ցաւ մը չզգա-
ցին . զանոնք հատցուցիր, բայց
խրատ ընդունիլ չուզեցին . իրենց
երեսը ապառաժէն աւելի կարծրա-
ցուցին, ու դառնալ չուզեցին ։
4 Ու ես ըսի . Իրաւցընէ անոնք աղ-
քատ են . անոնք անմիտ են . քան-
զի Տէրոջը ճամբան՝ իրենց Աստու-
5 ծոյն դատաստանը չեն գիտեր ։ Ես
մեծերուն երթամ, և անոնց հետ
խօսիմ . վասն զի անոնք Տէրոջը
ճամբան՝ իրենց Աստուծոյն դա-
տաստանը գիտեն . բայց ահա ա-
նոնք ալ լուծը կոտրեցին . կապե-
6 րը փրցուցին ։ Անոր համար զա-
նոնք անտառին առիւծը պիտի
մեռցընէ . զանոնք անապատնե-
րուն գայլը" պիտի սատկեցընէ .

Ն․ Ք․ ԳՔ․ իրր 612
Եսա․ Ե․ 28 ։ Բ Օր․ ԻԸ․ 49 ։ Ողբ․ Դ․ 19 ։ Ովս․ Ը․ 1 ։ Ամբ․ Ա․ 8 ։
Եսա․ Ա․ 16 ։ Յակ․ Դ․ 8 ։
Գլ․ Ը․ 16 ։
Գլ․ Ե․ 15 ։
Դ Թագ․ ԻԵ․ 1, 4 ։
Սաղ․ ՃԷ․ 17 ։ Եսա․ Ծ․ 1 ։ Գլ․ Բ․ 17, 19 ։
Եսա․ ԺԵ․ 5 ։ ԺԶ․ 11 ։ ԻԱ․ 8 ։ ԻԲ․ 4 ։ Գլ․ Թ․ 1, 10 ։ Տե՛ս Ղու․ ԺԹ․ 42 ։
* Եբր․ պատերը։
Սաղ․ ԽԲ․ 7 ։ Եզեկ․ Է․ 26 ։
Գլ․ Ժ․ 20 ։
Հռով․ ԺԶ․ 19 ։
Եսա․ ԻԴ․ 19 ։
Ծն․ Ա․ 2 ։
Եսա․ Ե․ 25 ։ Եզեկ․ ԼԸ․ 20 ։
Սոփ․ Ա․ 3 ։
Գլ․ Ե․ 10, 18 ։ Լ․ 11 ։ Խզ․ 28 ։
Ովս․ Դ․ 3 ։
Եսա․ Ե․ 30 ։ Ծ․ 3 ։

Ն․ Ք․ ԳՔ․ իրր 612
Թուոց․ ԻԳ․ 19 ։ Գլ․ Է․ 16 ։
Դ Թագ․ Թ․ 30 ։ Եզեկ․ ԻԳ․ 40 ։
† Եբր․ աչքերդ ծարուրով պատռես,
Գլ․ ԻԲ․ 20, 22 ։ Ողբ․ Ա․ 2, 19 ։
Եսա․ Ա․ 15 ։ Ողբ․ Ա․ 17 ։
Եզեկ․ ԻԲ․ 30 ։
Ծն․ ԺԸ․ 23, Ճ։ Սաղ․ ԺԲ․ 1 ։
Ծն․ ԺԸ․ 26 ։
Տիտ․ Ա․ 16 ։
Գլ․ Դ․ 2 ։
Գլ․ Է․ 9 ։
Բ Մն․ ԺԴ․ 9 ։
Եսա․ Ա․ 5 ։ Թ․ 13 ։ Գլ․ Բ․ 30 ։
Գլ․ Է․ 28 ։ Սոփ․ Գ․ 2 ։
Գլ․ Ը․ 7 ։
Միք․ Գ․ 1 ։
Սաղ․ Բ․ 3 ։
Գլ․ Դ․ 7 ։
‡ Կամ՝ երեկոյեան գայլը ։ Սաղ․ ՃԴ․ 20 ։ Ամբ․ Ա․ 8 ։ Սոփ․ Գ․ 3 ։

Ն. Ք. ԴՃ. Երր 612

ծանոնց քաղաքներուն վրայ ինձը
պիտի հսկէ . անոնցմէ ամէն դուրս
ելլողը պիտի փառատուի . վասն
զի անոնց յանցանքները շատցան ,
ու անոնց ապստամբութիւնները
բազմացան ։
7 Աս բանիս համար քեզի ի՞նչպէս
ներեմ . քու որդիներդ իս թողու-
ցին , և չաստուածներով երդում
ըրին . ու երբոր զանոնք կշտացու-
ցի , անոնք շնութիւն ըրին , և
բազմութեամբ բոզանոցը դացին ։
8 Առտուանց՝ գիրցած ձիերու պէս
են . ամէն մարդ իր դրացիին կնո-
9 կանը կը վրնջէ ։ Միթէ աս բա-
ներուն համար այցելութիւն պիտի
չընե՞մ , կ'ըսէ Տէրը . կամ ասանկ
ազգէ մը իմ հոգիս վրէժ պիտի
չառնէ՞ ։
10 Անոր պարիսպներուն վրայ ելէք
ու կործանեցէք , բայց չէ թէ բո-
լորովին . անոր մարտկոցները վեր-
ցուցէ՛ք , վասն զի անոնք Տէրոջը
11 չեն ։ Քանզի Իսրայէլի տունը և
Յուդայի տունը՝ ինծի խիստ ան-
հաւատարիմ եղան , կ'ըսէ Տէրը .
12 Անոնք Տէրը ուրացան , ու ըսին .
Անիկայ չէ , ու մեր վրայ չարիք
պիտի չգայ . Ու սուր ու սով պիտի
13 չտեսնենք . Ու մարգարէները հովի
պէս են , ու անոնց բերանը Տէրոջը
խօսքը չկայ . անոնց այնպէս ըլլայ ։
14 Անոր համար զօրաց Տէր Աս-
տուածը այսպէս կ'ըսէ . Դուք աս
խօսքը խօսելնուդ համար , ահա ես
իմ խօսքերս քու բերնիդ մէջը՝ կը-
րակ , և աս ժողովուրդը փայտ պի-
տի ընեմ , ու զանոնք պիտի սպա-
15 ռէ ։ Ահա ես ձեր վրայ հեռուէն
ազգ մը կը բերեմ՝ ով Իսրա-
յէլի տունը , կ'ըսէ Տէրը . անիկայ
զօրաւոր ազգ է . անիկայ հին ազգ
է , և անանկ ազգ մըն է , որ դուն
անոր լեզուն չես գիտեր , ու խօսա-
16 ծը չես հասկընար . Անոնց կապարճ-
ները բաց գերեզմանի պէս են . ա-
մէնքն ալ զօրաւոր մարդիկ են ։
17 Ու անիկայ պիտի ուտէ քու հունձ-
քըդ , ու քու տղաքներուդ ու աղ-
ջիկներուդ ուտելու հացը . քու հօ-
տերդ և արջառներդ պիտի ուտէ ,
քու այգիներդ ու թզենիներդ պի-
տի ուտէ . քու ապաւինած պարըս-
պաւոր քաղաքներդ սրով պիտի աւ-
18 րէ ։ Բայց ան օրերն ալ՝ կ'ըսէ
Տէրը , ձեզ պիտի չհատցընեմ ։
19 Ու թէ որ ըսէք . Ի՞նչ պատճա-
ռով մեր Տէր Աստուածը աս ամէնը
մեզի ըրաւ . դուն անոնց ըսես .
Ինչպէս որ դուք զիս թողուցիք ,
ու ձեր երկրին մէջ օտար աստուած-
ներու ծառայութիւն ըրիք , այն-
պէս ալ դուք ձերը չեղած երկրին
մէջ օտարներու ծառայութիւն
պիտի ընէք ։
20 Ասիկայ Յակոբին տանը մէջ
պատմեցէ՛ք , ու Յուդայի մէջ հրա-
21 տարակելով ըսէ՛ք . Հիմա մտիկ
ըրէք ասիկայ՝ ով յիմար ու անմիտ
ժողովուրդ , որ աչքեր ունիք , բայց
չէք տեսներ . ականջներ ունիք ,
22 բայց չէք լսեր ։ Ինծմէ պիտի չը-
վախնա՞ք , կ'ըսէ Տէրը , իմ երեսէս
պիտի չդողա՞ք , որ յաւիտենական
հրամանով մը աւազը ծովուն սահ-
ման դրի , և անկէ չանցնիր . թէև
անոր ալիքները կը ծփին , բայց չեն
կրնար յաղթել , թէև անոնք կը
գոչեն , բայց անկէ չեն կրնար անց-
23 նիլ ։ Սակայն աս ժողովուրդը
անհնազանդ ու ապստամբ սիրտ մը
ունի . անոնք երթալով իրենց ճամ-
24 բան ծռեցին , Ու իրենց սրտին մէջը
չըսին . Մեր Տէր Աստուծմէն վախ-
նանք , ան որ անձրևը՝ առաջի ու
վերջի անձրևը , իր ատենին կու
տայ , և հունձքի համար որոշուած
25 շաբաթները մեզի կը պահէ ։ Ձեր
անօրէնութիւնները ասոնք հեռա-
ցուցին . ձեր մեղքերը՝ բարիքը
26 ձեզմէ արգիլեցին ։ Վասն զի իմ
ժողովուրդիս մէջը ամբարիշտներ
գտնուեցան . անոնք թռչնորսներուն
կծկտելուն պէս՝ դարանամուտ
կ'ըլլան . որոգայթ կը լարեն , մար-
27 դիկներ կը բռնեն ։ Ինչպէս որ
վանդակը թռչուններով լեցուն է ,
այնպէս ալ անոնց տուները նեն-
գութեամբ լեցուն են . անոր համար
անոնք մեծցան , ու հարստացան .
28 Գիրցան , *պարարտացան . և չա-
րերուն գործքերէն ալ գերազանցե-
ցին . անոնք շիտակ դատաստան
չեն ըներ , որբին իրաւունքը չեն
պաշտպաներ . (Սակայն ամենայնիւ
յաջողութիւն կը գտնեն .) և աղ-
29 քատին դատը չեն տեսներ ։ Մի-
թէ աս բաներուն համար այցելու-
թիւն պիտի չընե՞մ , կ'ըսէ Տէրը .
կամ ասանկ ազգէ մը իմ հոգիս
վրէժ պիտի չառնէ՞ ։
30 Երկրի վրայ զարմանալի ու սոս-
31 կալի գործ կ'ըլլայ . Մարգարէները
սուտութեամբ մարգարէութիւն
կ'ընեն , և քահանաները անոնց
ձեռքովը կ'իշխեն , ու իմ ժողո-
վուրդս այնպէս կ'ախորժի . բայց
ի՞նչ պիտի ընէք , երբոր անոնց
վախճանը հասնի ։

## ԳԼ. Զ

1 Յուդայի վրայ երկուած թշնամիները 4 մէկզմէկ կը քաջալերեն ։ 9 Մարգարէն անոնց մեղքին պատճառովը Աստուծոյ բերելու դատաստաններուն համար կ'ողբայ . 18 Աստուծոյ բարկութիւնը կը ծանուցանէ . 26 ժո-

Ն. Ք. ԴՃ. Երր 612
ծ Ովս. ԺԴ. 7 ։
է Բ Օր. ԼԲ. 21 ։ Գաղ. Դ. 8 ։
հ Յես. ԻԳ. 7 ։ Սոփ. Ա. 5 ։
ի Բ Օր. ԼԲ. 15 ։
լ Եզեկ. ԻԲ. 11 ։
խ Գլ. ԺԳ. 27 ։
ծ Հմր 29 ։ Գլ. Թ. 9 ։
կ Գլ. ԽԴ. 22 ։
հ Գլ. ԼԹ. 8 ։
ձ Գլ. Գ. 27 ։ Հմր 18 ։
ղ Գլ. Գ. 20 ։
ճ ԲՄն. ԼԶ. 16 ։ Գլ. Դ. 10 ։
մ Ես. ԻԲ. 15 ։
յ Գլ. ԺԴ. 13 ։
ն Գլ. Ա. 9 ։
շ Ես. Թ. 3 ։ Գլ. Դ. 16 ։ Բ Օր. ԻԸ. 49 ։ Ես. Ե. 26 ։ Գլ. Ա. 15 ։ Զ. 22 ։
ո Ղև. ԻԶ. 16 ։ Բ Օր. ԻԸ. 31, 33 ։
չ Գլ. Դ. 27 ։
պ Բ Օր. ԻԹ. 24, &c ։ Գ Թագ. Թ. 8, 9 ։ Գլ. ԺԶ. 22 ։ ԺԲ. 10 ։
ջ Գլ. Բ. 13 ։

Ն. Ք. ԴՃ. Երր 612
ռ Բ Օր. ԻԹ. 4 ։
ս Ես. Զ. 9 ։ Եզեկ. ԺԲ. 2 ։ Մատ. ԺԳ. 14 ։ Յով. ԺԲ. 40 ։ Գործ. ԻԸ. 26 ։ Հռով. ԺԱ. 8 ։
վ Յայտ. ԺԵ. 4 ։
տ Յոբ. ԻԶ. 10 ։ ԼԸ. 10, 11 ։ Սաղ. ՃԴ. 9 ։ Առակ. Ը. 29 ։
ր Սաղ. ՃԽԷ. 8 ։ Գլ. ԺԴ. 22 ։ Մատ. Ե. 45 ։ Գործ. ԺԴ. 16 ։
ց Բ Օր. ԺԱ. 14 ։ Յովել. Բ. 23 ։
ւ Ծնն. Ը. 22 ։
փ Գլ. Գ. 3 ։
ք Առակ. Ա. 11, 17, 18 ։ Ամբ. Ա. 15 ։
օ Բ Օր. ԼԲ. 15 ։
* Եբր. փայլուն եղան ։
ֆ Ես. Ա. 23 ։ Զաք. Է. 10 ։
ա Յոբ. ԺԲ. 6 ։ Սաղ. ՀԳ. 12 ։ Գլ. ԺԲ. 1 ։
բ Հմր 9 ։ Մաղ. Գ. 5 ։
գ Գլ. ԻԳ. 14 ։ Ովս. Զ. 10 ։
դ Գլ. ԺԴ. 14 ։ ԻԳ. 25, 26 ։ Եզեկ. ԺԳ. 6 ։
ե Միք. Բ. 11 ։

Ն. Ք. Ծ. Իբր 612

ղովուրդը կը յորդորէ որ իրենց մեղքերուն դատաստանին համար սուգ ընեն ։

1 Ո՛վ Բենիամինի որդիք՝ Երուսա-
ղէմի մէջէն քաշուեցէ՛ք , ու
Թեկուէի մէջ փող հնչեցուցէ՛ք , և
[ա] Բեթաքարմայի վրայ նշան վեր-
ցուցէ՛ք . [բ] վասն զի հիւսիսէն չա-
րիք ու մեծ կոտորած կ'երևնայ ։
2 Սիօնի աղջիկը գեղեցիկ ու փափուկ
3 կնկան մը նմանցուցի ։ Հովիւնե-
րը և անոնց հօտերը անոր պիտի
երթան . [գ] անոր դէմ շուրջանակի
վրաններ պիտի կանգնեն . ամէն
մէկը իր սահմանին մէջը պիտի հո-
4 վուէ ։ [դ] Անոր վրայ պատերազմ
պատրաստեցէ՛ք . ելէ՛ք , ու [ե] կէս
օրին ելլենք . վա՜յ մեզի , վասն զի
օրը կանցնի , և իրիկուան ստուեր-
5 ները կ'երկըննան ։ Ելէ՛ք , ու գիշե-
րով ելլենք , և անոր *բերդերը
6 կործանենք ։ Վասն զի զօրաց Տէրը
այսպէս կ'ըսէ . Ծառեր կտրեցէ՛ք՝
ու Երուսաղէմի դէմ պատնէշ
կանգնեցէ՛ք . ասիկայ այցելութիւն
ընելու քաղաք մըն է . բոլորովին
հարստահարութեամբ լեցուած է ։
7 [զ] Ինչպէս որ ջրհորը իր ջուրերը կը
բղխէ , անիկայ ալ իր չարութիւնը
այնպէս կը բղխէ . [է] անոր մէջը
զրկանք ու յափշտակութիւն կը
լսուի . իմ առջևս միշտ ցաւեր ու
8 հարուածներ կան ։ Ո՛վ Երուսա-
ղէմ՝ խրատուէ՛ , չըլլայ որ [ը] իմ
Հոգիս քեզմէ զատուի . չըլլայ որ
քեզ աւերակ և անբնակ երկիր մը
դարձընեմ ։
9 Զօրաց Տէրը այսպէս կ'ըսէ .
Իսրայէլի մնացորդները այգիի պէս
բոլորովին ճռաքաղ պիտի ընեն .
քու ձեռքդ՝ կթողի պէս կողովնե-
րուն դարձուր ։
10 Որո՞ւն խօսիմ ու վկայութիւն
ընեմ , որ լսեն . ահա անոնց [թ] ա-
կանջները անթլփատ են , և չեն
կրնար մտիկ ընել . ահա [ժ] Տէրոջը
խօսքը անոնց առջևը անարգանք
11 եղաւ . անկէ չեն ախորժեր ։ Սա-
կայն ես Տէրոջը բարկութեամբը
լեցուած եմ . [ի] ինքզինքս զսպելէն
յոգնեցայ . [լ] զանիկա դուրսը պիտի
թափեմ տղաքներուն վրայ , ու
նաև երիտասարդաց ժողովին վրայ ,
քանզի էրիկ ու կնիկ մարդը , ծերը
ու տարիքը առածը պիտի բռնուին ։
12 Եւ [խ] անոնց տուները , ագարակները
ու կնիկները մէկտեղ՝ օտարաց
ձեռքը պիտի անցնին . վասն զի
երկրին բնակչացը վրայ իմ ձեռքս
պիտի երկընցընեմ , կ'ըսէ Տէրը ։
13 Ինչու որ անոնց պզտիկէն մինչև
մեծը՝ ամէնքը [ծ] ագահութեան ե-
տևէ եղան . ու մարգարէէն մինչև
քահանան՝ ամէնքը ստութեամբ կը
14 վարուին ։ Եւ [կ] իմ ժողովուրդիս
աղջկանը վէրքը հարևանցի բժշկե-
լով՝ [հ] Խաղաղութիւն , խաղաղու-
թիւն՝ կ'ըսեն , երբոր խաղաղու-
15 թիւն չկայ ։ Միթէ [ձ] պղծութիւն
ըրած ատեննին կ'ամչնա՞ն . բնաւ
չեն ամչնար , ու պատկառիլ չեն
գիտեր . անոր համար իյնողներուն
մէջը պիտի իյնան . անոնց այցե-
լութիւն ըրած ատենս պիտի գլո-
րին , կ'ըսէ Տէրը ։
16 Տէրը այսպէս կ'ըսէ . Ճամբանե-
րու վրայ կայնեցէ՛ք , ու նայեցէ՛ք ,
և [ղ] հին շաւիղներուն համար հար-
ցուցէ՛ք , թէ ո՞րն է բարի ճամբան .
ու անոր մէ՛ջը քալեցէ՛ք , որ [ճ] ձեր
հոգիներուն հանգիստ գտնէք . բայց
անոնք ըսին . Անոր մէջը չենք քա-
17 լեր ։ Եւ [մ] ձեր վրայ դէտեր դրի ,
ըսելով . Փողին ձայնը մտիկ ըրէք .
բայց անոնք ըսին . Մտիկ չենք ը-
18 ներ ։ Ուրեմն ո՛վ ազգեր՝ լսեցէ՛ք .
ո՛վ ժողովք՝ անոնց մէջը եղած բանը
19 գիտցի՛ր . [յ] Լսէ՛ ո՛վ երկիր . ահա
ես աս ժողովուրդին վրայ չարիք՝
[ն] անոնց խորհուրդներուն պտուղը
պիտի բերեմ . վասն զի իմ խօսքերս
մտիկ չըրին , և իմ օրէնքս ալ մեր-
20 ժեցին ։ [շ] Ինչո՞ւ ինծի այսպէս
[ո] Սաբայէն կնդրուկ գայ , ու հեռա-
ւոր երկրէ անուշահոտ խունկե-
ղէգն . [չ] ձեր ողջակէզները ընդու-
նելի չեն , և ձեր զոհերը ինծի հա-
21 ճելի չեն ։ Անոր համար Տէրը այս-
պէս կ'ըսէ . Ահա ես աս ժողովուր-
դին առջևը խոչեր կը դնեմ , ու հայ-
րերը որդւոցը հետ մէկտեղ անոնց
զարնուելով պիտի գլորին . դրա-
ցին ու բարեկամը պիտի կորսուին ։
22 Տէրը այսպէս կ'ըսէ . Ահա [պ] հիւ-
սիսի երկրէն ժողովուրդ մը կու
գայ , ու երկրիս ծայրերէն մեծ ազգ
23 մը կ'ելլէ . Անոնք աղեղ և նիզակ
կը կրեն . անոնք անգութ ու անո-
ղորմ են , անոնց ձայնը [ջ] ծովու
պէս կը գոռայ . և անոնք ձիերու
վրայ կը հեծնեն , ու պատերազմող
մարդու պէս քեզի դէմ կը շարուին՝
ո՛վ դուստր Սիօնի ։
24 Անոր լուրը լսեցինք . ձեռքերնիս
թուլցան , [ռ] և ցաւերը մեզ պաշա-
րեցին՝ ծննդական կնոջ երկանցը
25 պէս ։ Արտերը մի՛ ելլէք , ու
ճամբաները մի՛ պտըտիք . վասն
զի չորս կողմը թշնամիին սուրը ,
26 — վախ կայ ։ Ո՛վ իմ ժողովուր-
դիս աղջիկը՝ [ս] քո՛ւրձ հագիր , [վ] և
մոխիրի մէջ թաւալէ՛ , ու [տ] խիստ
դառն ողբով լա՛ց , ինչպէս որ մէկ
հատիկ տղու վրայ կու լան . վասն
զի կործանողը յանկարծ մեր վրայ
պիտի գայ ։
27 Քեզ իմ ժողովրդեանս մէջ՝ փոր-

ա Նեեմ. գ. 14.
բ Գլ. ա. 14. դ. 6.
գ Դ Թագ. իե. 1, 4. Գլ. դ. 17.
դ Գլ. ծա. 27. Յովէլ. գ. 9.
ե Գլ. ժե. 8.
* Կամ՝ պալատները
զ Եսա. ծէ. 20.
է Սաղ. ծե. 9, 10, 11. Գլ. ի. 8. Եզեկ. է. 11, 23.
ը Եզեկ. իգ. 18. Ովս. թ. 12.
թ Գլ. է. 26. Գործ. է. 51. Տես Եւ. գ. 12.
ժ Գլ. ի. 8.
ի Գլ. ի. 9.
լ Գլ. թ. 21.
խ Բ Օր. իը. 30. Գլ. ը. 10.
ծ Եսա. ծզ. 11. Գլ. ը. 10. ժդ. 18. իգ. 11. Միք. գ. 5, 11.

Ն. Ք. Ծ. Իբր 612

կ Գլ. ը. 11. Եզեկ. ժգ. 10.
հ Գլ. դ. 10. ժդ. 13. իդ. 17.
ձ Գլ. գ. 3. ը. 12.
ղ Եսա. ը. 20. Գլ. ժը. 15. Մաղ. դ. 4. Ղու. ժզ. 29.
ճ Մատ. ժա. 29.
մ Եսա. իա. 11. ծը. 1. Գլ. իե. 4. Եզեկ. գ. 17. Ամբ. բ. 1.
յ Եսա. ա. 2.
ն Առակ. ա. 31.
շ Սաղ. խ. 6. ծ. 7, 8, 9. Եսա. ա. 11. կզ. 3. Ամով. ե. 21. Միք. զ. 6, 7.
ո Եսա. կ. 6.
չ Գլ. է. 21.
պ Գլ. ա. 15. ե. 15. ժ. 22. ծ. 41, 42, 43.
ջ Եսա. ե. 30.
ռ Գլ. դ. 31. ժդ. 21. խթ. 24. ծ. 43.
ս Գլ. դ. 8.
վ Գլ. իե. 34. Միք. ա. 10.
տ Զաք. ժբ. 10.

Ն.Ք. Ա. Գ. Փ.
Իրր 612

ձիշ… բերդ դրի , որ անոնց ճամ-
28 բան գիտնաս և փորձես ։ Ամէնքը
կամակոր ապստամբներ են . բամ-
բասելու թեան կը պտըտին ։ պղինձ
ու երկաթ են ։ ամէնքը ապակա-
29 նացած են ։ Փուքը այրեցաւ .
կապարը կրակէն հատաւ . արծա-
թագործը պարապ տեղը կ'աշխա-
տի . վասն զի չարերը չորոշուե-
30 ցան ։ Անոնց Անպիտան ար-
ծաթ պիտի կանչեն . վասն զի Տէրը
զանոնք մերժեց ։

Գ Լ. Է

1 Երեմիա կը խրկուի ճշմարիտ ապաշխարութիւն քարոզելու , ու հրէից գերութեանը առջին առնելու . 8 անոնց պարապ յոյսը կը մերժէ՝ 12 Սելովին օրինակովը . 17 անոնց սպառնալիքներ կ'ընէ իրենց կռապաշտութեանը համար . 21 կը ցուցընէ թէ անհնազանդ մարդոց զոհերը Աստուծոյ ընդունելի չեն . 29 կը յորդորէ ժողովուրդը որ Տոփեթի մէջ եղած գարշելի գործքերուն , 32 ու անոնց պատճառովը իրենց վրայ եկած գատաստաններուն համար սուգ ընեն ։

Իրր 600

1 Տէրոջը կողմանէ Երեմիային եղած
2 խօսքն է , որ ըսաւ . Տէրոջը
տանը դուռը կայնէ , ու հոն աս
խօսքը կանչէ , ու ըսէ . Տէրոջը
խօսքը մտիկ ըրէք ով բոլոր Յու-
դա , որ աս դռներէն կը մտնէք՝
Տէրոջը երկրպագութիւն ընելու
3 համար ։ Զօրաց Տէրը՝ Իսրայէլին
Աստուածը այսպէս կ'ըսէ . Ձեր
ճամբաները ու գործքերը ուղղե-
ցէք , և ձեզ պիտի թողում որ
4 աս տեղը բնակիք ։ Դուք մի ա-
պաւինիք սուտ խօսքերուն՝ որ կ'ը-
սեն . Տէրոջը տաճարը , Տէրոջը
տաճարը , Տէրոջը տաճարը ասոնք
5 են ։ Քանզի թէ որ ձեր ճամբա-
ները ու գործքերը բոլորովին ուղ-
ղէք , և թէ որ մարդուն ու անոր
ընկերին մէջտեղը իրաւունքը
զգուշութեամբ 'ի գործ դնէք ,
6 Պանդուխտին , որբին ու որբևա-
րիին զրկանք չընէք , ու աս տեղս
անմեղ արիւն չթափէք , և օտար
աստուածներու ետևէ չերթաք , որ
7 ձեզի չարիքի պատճառ կ'ըլլայ , Ես
ասենը աս տեղս՝ ձեր հայրերուն
տուած երկրիս մէջը պիտի բնակե-
ցընեմ ձեզ յաւիտենանս յաւիտե-
նից ։
8 Ահա դուք սուտ խօսքերու կ'ա-
պաւինիք , որոնք չեն կրնար օգուտ
9 մը ընել ։ Արդեօք գողութիւն ,
մարդասպանութիւն և շնութիւն
ընելով , ու սուտ երդում ընելով ,
և Բահաղին խունկ ծխելով , ու ձեր
չգիտցած օտար աստուածներուն
10 ետևէն երթալով , Կրնաք գալ ,
ու իմ առջևս կայնիլ աս տանս մէջ՝
որուն վրայ իմ անունս կոչուած
է , և ըսել թէ Ազատեցանք որ աս

Ա Թգ. ա. 18 ։ ժե. 20 ։
Գ Գլ. ե. 23 ։
Գլ. թ. 4 ։
Եզեկ. իբ. 18 ։
Ես. ա. 22 ։
Գլ. իզ. 2 ։
Գլ. ժը. 11 ։ իզ. 13 ։
Միք. գ. 11 ։
Գլ. իբ. 3 ։
Բ Օր. զ. 14, 15 ։ ը. 19 ։ ժա. 28 ։ Գլ. ժգ. 10 ։
Բ Օր. դ. 40 ։
Գլ. գ. 18 ։
Գլ. ե. 31 ։ ժգ. 13, 14 ։
Հմր 4 ։
Գ Թագ. ժը. 21 ։ Ովս. գ. 1, 2 ։ Սոփ. ա. 5 ։
Եւ. ի. 8 ։ Հմր 6 ։
Եզեկ. իզ. 39 ։
Հմր 11, 14, 30 ։ Գլ. լբ. 34 ։ լգ. 15 ։

ամէն պղծութիւնները ընենք ։
11 Աս տունը՝ որուն վրայ իմ անունս
կոչուած է , միթէ ձեր աչքերուն
առջևը աւազակներու քարայր ե-
ղաւ . ահա ես ալ տեսայ , կ'ըսէ
12 Տէրը ։ Բայց հիմա դուք Սելովի
մէջ եղող իմ տեղս գացէք , ուր որ
առաջ իմ անունս հաստատեցի , և
տեսէք ինչ որ անոր ըրեր եմ՝ իմ
ժողովուրդիս Իսրայէլին չարու-
թեանը համար ։
13 Ու հիմա որովհետև աս բոլոր
գործքերը ըրիք՝ կ'ըսէ Տէրը , ու
թէպէտ ձեզի խօսեցայ կանուխ
ելլելով ու խօսելով , բայց դուք
մտիկ չըրիք , ձեզ կանչեցի , բայց
14 դուք պատասխան չտուիք , Ես ալ
աս ձեր ապաւինած տանը՝ որուն
վրայ իմ անունս կոչուած է , և
ձեզի , ու ձեր հայրերուն տուած
տեղւոյն՝ Սելովին ըրածիս պէս
15 պիտի ընեմ . Եւ ինչպէս որ ձեր
բոլոր եղբայրները , Եփրեմի բոլոր
սերունդը վռընտեցի , այնպէս ալ
ձեզ իմ առջևէս պիտի վռընտեմ ։
16 Ուստի դուն աս ժողովուրդին
համար աղօթք մի' ըներ . և անոնց
համար աղաղակ ու աղաչանք մի'
մատուցաներ , ու ինծի բարեխօ-
սութիւն մի' ըներ . վասնզի քեզի
17 մտիկ չեմ ըներ ։ Դուն չե՞ս տես-
ներ թէ անոնք ինչ կը գործեն
Յուդայի քաղաքներուն մէջ՝ ու
Երուսաղէմի փողոցներուն մէջ ։
18 Տղաքները փայտ կը ժողվեն , և
հայրերը կրակ կը վառեն , ու կնիկ-
ները խմոր կը շաղեն , երկնից
թագուհիին բլիթներ շինելու հա-
մար . և օտար աստուածներուն
նուէրներ կը մատուցա-
19 նեն , որ զիս բարկացընեն ։ Միթէ
անոնք զի՞ս կը բարկացընեն ,
կ'ըսէ Տէրը . չէ՞ որ իրենց անձը
կը բարկացընեն իրենց երեսին ամօթին
համար ։
20 Անոր համար այսպէս կ'ըսէ Տէր
Եհովան . ահա իմ բարկութիւնս
ու սրտմտութիւնս աս տեղւոյս
վրայ պիտի թափի , մարդու վրայ ,
և անասունի վրայ , ու դաշտի ծա-
ռերուն վրայ , ու երկրի պտուղնե-
րուն վրայ . և պիտի բռընկի , ու
պիտի չմարի ։
21 Զօրաց Տէրը՝ Իսրայէլին Աս-
տուածը այսպէս կ'ըսէ . Ձեր ողջա-
կէզները ձեր զոհերուն վրայ աւել-
22 ցուցէք , և միս կերէք ։ Վասն
զի ձեր հայրերը Եգիպտոսի երկրէն
հանած օրս՝ անոնց բան մը չխօսե-
ցայ ողջակէզի ու զոհի վրայով , ոչ
23 ալ անոնց հրամայեցի . Հապա ա-
նոնց աս բանը հրամայեցի ու ըսի .
Իմ ձայնս մտիկ ըրէք , և ես

Ն. Ք. Ա. Գ. Փ.
Իրր 600

Ես. ծգ. 7 ։
Մատ. իա. 13 ։ Մար. ժա. 17 ։ Ղու. ժթ. 46 ։
Յես. ժը. 1 ։ Դատ. ժը. 31 ։
Բ Օր. ժբ. 11 ։
Ա Թագ. դ. 10, 11 ։ Սաղ. հը. 60 ։ Գլ. իզ. 6 ։
Բ Մն. լզ. 15 ։ Հմր 25 ։ Գլ. ժա. 7 ։
Առակ. ա. 24 ։ Ես. կե. 12 ։ կզ. 4 ։
Ա Թագ. դ. 10, 11 ։ Սաղ. հը. 60 ։ Գլ. իզ. 6 ։
Դ Թագ. ժէ. 23 ։
Սաղ. հը. 67, 68 ։
Եւ. լր. 10 ։ Գլ. ժա. 14 ։ ժդ. 11 ։
Գլ. ժե. 1 ։
Գլ. խդ. 17, 19 ։
Գլ. ժթ. 13 ։
Բ Օր. լբ. 16, 21 ։
Ես. ա. 11 ։ Գլ. զ. 20 ։ Ամով. ե. 21 ։ Տես Ովս. ը. 13 ։
Ա Թագ. ժե. 22 ։ Սաղ. ծա. 16, 17 ։ Ովս. զ. 6 ։
Եւ. ժե. 26 ։ Բ Օր. զ. 3 ։ Գլ. ժա. 4, 7 ։
Եւ. ժթ. 5 ։ Ղև. իզ. 12 ։

Ն. Ք. Գ. Ի. Ե. Ա. 600

ձեզի Աստուած ըլլամ, ու դուք
ինծի ժողովուրդ ըլլաք. և ձեզի
ամէն հրամայած ճամբաներուս
մէջը քալեցէք, որ ձեզի ա-
24 ղէկ ըլլայ։ Բայց անոնք մը-
տիկ չըրին, ու ականջնին չծը-
ռեցին. հապա իրենց չար սրտին
կամակորութեամբը իրենց խոր-
հուրդներուն հետևեցան, ու ետ
25 գացին, և չէ թէ առաջ։ Ձեր
հայրերը Եգիպտոսի երկրէն ելած
օրէն մինչև աս օրս իմ բոլոր ծա-
ռաներս մարգարէները ձեզի խրկե-
ցի. ամէն օր կանուխ ելլելով կը
26 խրկէի. Ու ինծի մտիկ չըրին, և
ականջնին չծռեցին. հապա ի-
րենց պարանոցը խստացուցին.
իրենց հայրերէն աւելի չար եղան։
27 Եւ դուն աս բոլոր խօսքերը ա-
նոնց պիտի զրուցես, բայց քեզի
մտիկ պիտի չընեն. զանոնք պիտի
կանչես, բայց քեզի պատասխան
28 պիտի չտան։ Ան ատենը անոնց
ըսես. Իր Տէր Աստուծոյն ձայնը
մտիկ չընող՝ ու խրատ չընդունող՝
ազգը աս է. ճշմարտութիւ-
նը կորսուեցաւ՝ ու անոնց բերնէն
կտրեցաւ։
29 Մազերդ կտրէ՛, ու նետէ՛ ու
Երուսաղէմ, և բլուրներուն վրայ
ողբա. քանզի Տէրը մերժեց ու
երեսէ ձգեց ան ազգը՝ որուն դէմ
30 շատ սրդողեր էր։ Վասն զի Յու-
դայի որդիքը իմ առջևս չարու-
թիւն գործեցին, կ'ըսէ Տէրը. ի-
րենց գարշելի բաները՝ իմ անու-
նովս կոչուած տանը մէջ դրին, որ
31 զանիկայ պղծեն։ Ու Ենովմի որ-
դւոյն ձորին մէջը եղող Տօփէթի
բարձր տեղերը շինեցին, իրենց
տղաքը ու աղջիկները կրակով այ-
րելու համար. որ անոնց չհրամա-
յեցի, ու միտքէս ալ անցած չէր։
32 Ուստի ահա օրեր կու գան, կ'ըսէ
Տէրը, որ ալ Տօփէթ, կամ Ե-
նովմի որդւոյն ձորը պիտի չըսուի,
հապա՝ Սպանութեան ձոր. Եւ Տօ-
փէթի մէջ մեռելներ պիտի թաղեն
33 մինչև որ ալ տեղ չմնայ։ Ու
աս ժողովուրդին դիերը՝ երկինքի
թռչուններուն ու երկրի գազան-
ներուն կերակուր պիտի ըլլան. և
զանոնք վռնտող մը պիտի չըլլայ։
34 Ու Յուդայի քաղաքներէն, ու Ե-
րուսաղէմի փողոցներէն՝ ցնծու-
թեան ձայնը, և ուրախութեան
ձայնը, փեսային ձայնը, ու հար-
սին ձայնը պիտի դադրեցնեմ.
վասն զի երկիրը աւերակ պիտի ըլ-
լայ։

## ԳԼ. Ը

1 Թէ՛ մեռած և թէ ողջ մնացած Հրեաներուն
թշուառութիւնը։ 4 Մարգարէն կը յանդի-
մանէ անոնց յիմարական և ամօթալից ան-
զեղջութիւնը. 13 կը ցուցնէ անոնց վրայ
հասնելու ծանր դատաստանը, 18 ու անոնց
յուսահատական վիճակին վրայ կ'ողբայ։

1 Ան ժամանակը՝ կ'ըսէ Տէրը, Յու-
դայի թագաւորներուն ոսկոր-
ները, ու անոր իշխաններուն ոս-
կորները, և քահանաներուն ոսկոր-
ները, ու մարգարէներուն ոսկորնե-
րը՝ ու Երուսաղէմի բնակչացը ոս-
կորները իրենց գերեզմաններէն պի-
2 տի հանեն, Եւ պիտի տարածեն
զանոնք արևուն առջևը, ու լուսի-
նին առջևը, և երկինքի բոլոր զօր-
քին առջևը, որ զանոնք սիրեցին,
ու անոնց ծառայեցին, և անոնց
ետևէն գացին, ու զանոնք փնտռե-
ցին, և անոնց երկրպագութիւն
ըրին. անոնք պիտի չժողվուին,
ու պիտի չթաղուին. երկրի ե-
րեսին վրայ աղբի պէս պիտի ըլ-
3 լան։ Եւ մահը կեանքէն աւելի
ցանկալի պիտի ըլլայ աս չար ազ-
գին բոլոր մնացորդներուն՝ որոնք
մնացեր են ան ամէն տեղուանքը,
ուր որ զանոնք վռնտեր եմ, կ'ըսէ
զօրաց Տէրը։
4 Ու անոնց ըսես. Տէրը այսպէս
կ'ըսէ. Միթէ անոնք պիտի իյ-
նան, ու պիտի չելլե՞ն. կամ մէկը
ճամբայէն կը խոտորի՝ ու ետ չը-
5 դառնար. Ինչո՞ւ աս Երուսաղէմի
ժողովուրդը մշտատև խոտորու-
մով մը խոտորեցաւ. Նանոնք
նենգութեան յարեցան, ու դառ-
6 նալ չուզեցին։ Ականջ դրի ու
մտիկ ըրի. անոնք շիտակ չեն խօ-
սիր. մարդ մը չկայ որ իր չարու-
թենէն զղջայ, ու ըսէ թէ, Աս
ի՞նչ գործեցի. ամէնքը իրենց ըն-
թացքին դարձան՝ պատերազմի վա-
7 զող ձիու պէս։ Արագիլը ան-
գամ օդին մէջ իր որոշ ժամանակը
գիտէ, ու տատրակը, և կռունկը,
ու ծիծեռնիկը իրենց գալստեան
ժամանակը կը գիտեն. բայց իմ
ժողովուրդս Տէրոջը դատաստանը
8 չգիտեր։ Ինչպէ՞ս կ'ըսէք թէ՝
Մենք իմաստուն ենք, Ու Տէրոջը
օրէնքը մեր քովն է. իրաւցընէ
ահա դպիրներուն սուտ գրիչը
9 ստութիւն կը գործէ։ Իմաս-
տունները ամչցան. անոնք զար-
հուրեցան, ու բռնուեցան. ահա
Տէրոջը խօսքը անարգեցին. ալ ա-
նոնց քովը ի՞նչ իմաստութիւն կը
10 մնայ։ Ուստի անոնց կնիկները
օտարներուն, անոնց ագարակները՝
անոնց տիրողներուն պիտի տամ.
ինչու որ պզտիկէն մինչև մեծը՝ ա-
մէնքը ագահութեան ետևէ ե-
ղան. մարգարէէն մինչև քահա-
նան՝ ամէնքը ստութեամբ կը վա-

Ղաւ. ժա. 11։ Գլ. ժա. 8։
Բ Օր. ժթ. 19։ Սաղ. ձա. 12։
Գլ. ը. 27։ լը. 33։
Բ Մն. լզ. 15։ Գլ. իե. 4։ իթ. 19։
Հմր 13։
Հմր 24։ Գլ. ժա. 8։ ժէ. 23։ իե. 3, 4։
Նեեմ. թ. 17, 29։ Գլ. ժթ. 15։
Գլ. ժզ. 12։
Եզեկ. բ. 7։
Գլ. ե. 3։ լբ. 33։
Գլ. թ. 3։
Յոբ. ա. 20։ Ես. ժե. 2։ Գլ. ժզ. 6։ Խը. 37։ Միք. ա. 16։
Թագ. իա. 4, 7։ Բ Մն. լգ. 4, 5, 7։ Գլ. իգ. 11։ լբ. 34։ Եզեկ. է. 20։ ը. 5, 6։ Դան. թ. 27։
Դ Թագ. իգ. 10։ Գլ. ժթ. 5։ լբ. 35։
Սաղ. ճզ. 38։
Բ Օր. ժէ. 3։
Գլ. ժթ. 6։
Դ Թագ. իգ. 10։ Գլ. ժթ. 11։ Եզեկ. զ. 5։
Կամ՝ ուրիշ տեղ չըլլալուն համար։
Բ Օր. իը. 26։ Սաղ. հթ. 2։ Գլ. ժբ. 9։ ժզ. 4։ լգ. 20։
Ես. իդ. 7, 8։ Գլ. ժզ. 9։ իե. 10։ լգ. 11։ Եզեկ. իզ. 13։ Ովս. բ. 11։ Յայտ. ժը. 23։
Ղև. իզ. 33։ Ես. ա. 7։ զ. 26։

Դ Թագ. իգ. 5։ Եզեկ. բ. 16։
Գլ. իբ. 19։
Դ Թագ. ի. 37։ Սաղ. ձգ. 10։ Գլ. իժ. 22։ ժզ. 4։
Յոբ. գ. 21, 22։ է. 15, 16։ Յայտ. թ. 6։
Գլ. է. 24։
Գլ. թ. 6։
Գլ. ե. 3։
Բ Պետ. գ. 9։
Ես. ա. 3։
Երգ. բ. 12։
Գլ. ե. 4, 5։
Հռովմ. բ. 17։
Եզ. ժ. 1։
Գլ. զ. 15։
Բ Օր. իը. 30։ Գլ. զ. 12։ Ամով. ե. 11։ Սոփ. ա. 13։
Ես. ծզ. 11։ Գլ. զ. 13։

Ն. Ք. ԳՃ
ԻՐ 600

Գլ. Զ. 14։ Եզեկ. ԺԳ. 10։
Գլ. Գ. 3։ Զ. 15։
Ես. Ե. 1. Է։ Յովել. Ա. 7։
Մատ. ԻԱ. 19։ Ղուկ. ԺԳ. 6. Է։
Գլ. Դ. 5։
Գլ. Թ. 15։ ԻԳ. 15։
Գլ. ԺԴ. 19։
Գլ. Դ. 15։ Գլ. ԽԷ. 3։
Սաղ. ԾԸ. 4, 5։ Ժող. Ժ. 11։
Ես. ԼԹ. 3։
Բ Օր. ԼԲ. 21։ Ես. Ա. 4։
Գլ. Դ. 19։ Թ. 1։ ԺԴ. 17։
Ծն. ԼԷ. 25։ ԽԶ. 11։ Գլ. ԽԶ. 11։ ԾԱ. 8։

11 րուին ։ Եւ իմ ժողովուրդիս
աղջկանը վէրքը հարեւանցի բժշկե-
լով՝ Խաղաղութիւն, խաղաղու-
թիւն՝ կ՚ըսեն, երբոր խաղաղու-
12 թիւն չկայ ։ Միթէ պղծու-
թիւն ըրած ատեննին կ՚ամչնա՞ն.
բնաւ չեն ամչնար, ու պատկառիլ
չեն գիտեր. անոր համար ինկող-
ներուն մէջը պիտի իյնան. անոնց
այցելութիւն եղած ատենը պիտի
13 գլորին, կ՚ըսէ Տէրը ։ Զանոնք
բոլորովին բնաջինջ պիտի ընեմ,
կ՚ըսէ Տէրը. որթին վրայ խաղող
պիտի չըլլայ, և թզենիին վրայ
թուզ պիտի չըլլայ. անոնց տերեւն
ալ պիտի թառամի, ու անոնց
տուածս՝ անոնցմէ պիտի անցնի ։
14 Մենք ինչո՞ւ կը նստինք. Ժող-
վուեցէ՛ք, ու պարսպաւոր քաղաք-
ներու մէջ մտնենք, և հոն լուռ
կենանք. վասն զի մեր Տէր Աս-
տուածը մեզ լռեցուց, ու մեզի
դառնութեան ջուր խմցուց.
քանզի Տէրոջը դէմ մեղք գործե-
15 ցինք ։ Խաղաղութեան սպասե-
ցինք, բայց բարութիւն չկար.
բժշկութեան ժամանակին սպասե-
ցինք, բայց ահա խռովութիւն է-
16 ղաւ ։ Անոր ձիերուն փռնչիւնը
Դանէն լսուեցաւ. անոր զօրա-
վարներուն խրխնջմանը ձայնէն բո-
լոր երկիրը շարժեցաւ. վասն զի
պիտի գան, ու երկիրը և անոր լի-
ութիւնը, քաղաքը ու անոր բնա-
17 կիչները պիտի ուտեն ։ Քանզի
ահա ես ձեր մէջը օձեր՝ քարբեր կը
խրկեմ, որ զանոնց թովչութիւն
չազդեր, և ձեզ պիտի խածնեն,
կ՚ըսէ Տէրը ։
18 Իմ զուարթութիւնս տրտմու-
թեան փոխուեցաւ. իմ սիրտս ներ-
19 սի դիս կը մարի ։ Ահա հեռաւոր
երկրէ եկողներուն պատճառաւը՝
իմ ժողովուրդիս աղջկանը աղաղակին
ձայնը. Միթէ Տէրը Սիոնի մէջ
չէ՞. անոր թագաւորը հոն չէ՞ ։
Ինչո՞ւ իրենց քանդակած կուռ-
քերովը, օտարաց ունայնու-
թիւններովը զիս բարկացուցին ։
20 Հունձքի ատենը անցաւ, ամա-
ռը վերջացաւ. բայց մենք չփըր-
կուեցանք ։
21 Իմ ժողովուրդիս աղջկանը վէր-
քին համար վիրաւորեցայ. խաւա-
րեցայ, ապշութիւնը զիս պա-
22 շարեց ։ Միթէ Գաղաադու մէջ
բալասան չկա՞յ. հոն բժիշկ չկա՞յ.
հապա ինչո՞ւ համար իմ ժողովուր-
դեանս աղջիկը բժշկութիւն չըր-
տաւ ։

ԳԼ. Թ

*1 Երեմիա՝ կ՚ողբայ Հրէից վրայ՝ իրենց պատ-ժան մեղքերուն համար ։ 9 ու անոնց պատիժին համար. 12 անհնազանդութիւնը պատճառ կը դնէ իրենց անտանելի թշուառութեանը. 17 կը յորդորէ ժողովուրդը՝ որ իրենց կործանմանը համար սուգ ընեն, 23 և իրենց անձերուն չվստահին, հապա միայն Տէրոջը. 25 Հրէաներուն և միանգամայն հեթանոսներուն սպառնալիքներ կ՚ընէ ։*

1 Երանի թէ գլուխս ջուր, ու
աչքերս՝ արցունքի աղբիւր ըլ-
լային, որ ցորեկ ու գիշեր լայի իմ
ժողովուրդիս աղջկանը սպան-
2 նուածներուն համար ։ Երանի
թէ անապատի մէջ ճամբորդնե-
րու իջեւան մը ունենայի, որ իմ
ժողովուրդս թողուի, ու անոնցմէ
երթայի. վասն զի ամէնքը շը-
նացողներ են, նենգաւորներու
3 ժողով են ։ Եւ իրենց լեզունե-
րը՝ իրենց աղեղներուն պէս կը լա-
րեն ստութեան համար, բայց
ճշմարտութեան համար երկրի
վրայ քաջութիւն չունին. վասն
զի չարութենէ ՚ի չարութիւն
կ՚երթան, ու զիս չեն ճանչնար,
4 կ՚ըսէ Տէրը ։ Ամէն մարդ թող
իր ընկերէն զգուշանայ, ու բնաւ
մէկ եղբօր մը մի՛ ապաւինիք. վասն
զի ամէն եղբայր խաբէութիւն կը
ընէ, և ամէն ընկեր բանսար-
5 կութեան կը պտըտի ։ Ու ամէն
մարդ իր ընկերը կը խաբէ, և ճըշ-
մարտութիւն չեն խօսիր. անոնք
իրենց լեզուները սուտ խօսելու
սորվեցուցած են. անօրէնութիւն
ընելով կը յոգնին ։
6 Քու բնակարանդ նենգութեան
մէջ է. նենգութեան պատճառաւ
զիս ճանչնալ չեն ուզեր, կ՚ըսէ
7 Տէրը ։ Անոր համար զօրաց Տէրը
այսպէս կ՚ըսէ. Ահա զանոնք պի-
տի հալեցընեմ, ու պիտի փորձեմ.
վասն զի իմ ժողովուրդիս աղջկա-
8 նը համար ի՞նչպէս ընեմ ։ Անոնց
լեզուն մահաբեր նետ է. նենգու-
թիւն կը խօսի. բերնովը իր ըն-
կերին հետ խաղաղութիւն կը խօ-
սի, բայց սրտովը անոր դարան կը
9 պատրաստէ ։ Միթէ աս բանե-
րուն համար անոնց այցելութիւն
պիտի չընե՞մ, կ՚ըսէ Տէրը. կամ
ասանկ ազգէ մը իմ հոգիս վրէժ
պիտի չառնէ՞ ։
10 Լեռներուն համար լաց ու ողբ՝
և անապատի արօտներուն համար
կոծ պիտի ընեմ. վասն զի այրե-
ցան. անկէ մարդ չանցնիր, ու
խաշինքներու ձայն չլսուիր. օդին
թռչուններէն մինչև անասունները
11 փախան՝ գացին ։ Ու Երուսաղէմը
աւերակներու դէզեր, և ճագար-
ներու բնակարան պիտի ընեմ, ու
Յուդայի քաղաքները՝ անբնակ ա-
մայութեան պիտի դարձընեմ ։
12 Ո՞վ է այն իմաստուն մարդը, որ

Ն. Ք. ԳՃ.
ԻՐ 600.

Ես. ԻԲ. 4։ Գլ. Դ. 19։ ԺԴ. 17։ ԺԴ. 17։ Ողբ. Բ. 11։ Գ. 48։
Գլ. Ե. 7, 8։
Սաղ. ԿԴ. 3։ Ես. ԾԹ. 4, 13, 15։
Բ Թագ. Բ. 12։ Ովս. Դ. 1։
Գլ. ԺԲ. 6։ Միք. Է. 5, 6։
Գլ. Զ. 28։
Ես. Ա. 25։ Մաղ. Գ. 3։
Ովս. ԺԱ. 8։
Սաղ. ԺԲ. 2։ ԾԽ. 3։ ՀԸ 3։
Սաղ. ԻԸ. 3։ ԾԵ. 21։
Գլ. Ե. 9, 29։
Գլ. ԺԲ. 4։ ԻԳ. 10։ Ովս. Դ. 3։
Գլ. Դ. 25։ Ես. ԼԵ. 2։
Ես. ԺԳ. 22։ ԼԴ. 13։ Գլ. Ժ. 22։
Սաղ. ԾԵ. 43։ Ովս. ԺԴ. 9։

Ն․ Ք․ ԴՔ․ իրր 600

տաիկայ հասկընայ . և անոր՝ Աս–
տուծոյ բերանը խօսած ըլլայ , որ
տաիկայ պատմէ , թէ երկիրը ին–
չո՞ւ համար աւրուեցաւ , ու այրած
անապատի պէս եղաւ , ուսկից որ
13 մարդ չանցնիր ։ Եւ Տէրը ըսաւ .
Վասն զի անոնք իմ օրէնքս ձգեցին ,
որն որ իրենց առջևը դրեր էի , ու
իմ ձայնիս մտիկ չընելով՝ անոր հա–
14 մեմատ չքալեցին , Հապա իրենց
սրտին կամակորութեանը՝ և հայ–
րերնուն իրենց սորվեցուցած Բա–
ղաղիմին ետևէն գացին ։
15 Անոր համար զօրաց Տէրը՝ Իս–
րայէլին Աստուածը այսպէս կ՚ըսէ .
Ահա ես աս ժողովուրդին՝ օշինդր
պիտի կերցընեմ , ու անոնց՝ դառ–
նութեան ջուր պիտի խմցընեմ ,
16 Եւ զանոնք պիտի ցրուեմ ան ազ–
գերուն մէջը , որոնք ո՛չ իրենք
գիտցան , ո՛չ ալ իրենց հայրերը ,
ու անոնց վրայ սուր պիտի խըր–
կեմ , մինչև որ զանոնք հատցընեմ ։
17 Զօրաց Տէրը այսպէս կ՚ըսէ .
Մտածեցէ՛ք , ու լալկան կնիկնե՛ր
կանչեցէք , որ գան , և հանճարեղ
կնիկներուն լուր խրկեցէք , որ
18 գան , Ու մեզի համար շուտով
ողբի ձայն վերցընեն , որ մեր աչ–
քերը արցունքներ իջեցընեն , և մեր
արտևանունքը ջուրեր վազցընեն .
19 Քանզի Սիօնէն ողբի ձայն լսուե–
ցաւ . Ի՛նչպէս կործանեցանք .
խիստ ամչցանք . վասն զի երկիրը
թողուցինք . վասն զի [illegible]
հիմնայատակ ըրին մեր բնակարան–
20 ները ։ Ուրեմն ո՛վ կնիկներ՝ Տէ–
րոջը խօսքը մտի՛կ ըրէք , և ձեր
ականջները անոր բերնին խօսքը
թող ընդունի՛ն . ու ձեր աղջիկ–
ներուն ողբ սորվեցուցէք . և ամէն
կնիկ իր դրացիին եղերերգութիւն
21 [illegible] ։ Վասն զի մահը մինչև
մեր պատուհանները ելաւ , մեր պա–
լատները մտաւ , որ փողոցներէն
տղաքները՝ [illegible] հրապարակներէն ե–
22 րիտասարդները բնաջինջ ընէ ։ Ըսէ՛
որ՝ Տէրը այսպէս կ՚ըսէ . Մարդոց
դիակունքը պիտի իյնան՝ դաշտե–
րու երեսին վրայ եղող աղբին պէս ,
կամ հնձողներուն ետևը [illegible]
խուրձի պէս . և պիտի չըլլայ մէկը՝
որ [illegible] ժողվէ ։
23 Տէրը այսպէս կ՚ըսէ . Իմաստու–
նը իր իմաստութեամբը չպարծի ,
ու զօրաւորը իր զօրութեամբ չը–
պարծի . հարուստը իր հարստու–
24 թեամբը չպարծի . Հապա ան որ
կը պարծի՝ թող ասո՛վ պարծի , որ
կը հասկընայ ու զիս կը ճանչնայ ,
[illegible] թէ ես եմ Տէրը , որ երկրի
վրայ ողորմութիւն , իրաւունք ու
արդարութիւն կ՚ընեմ . քանզի ես
տանց կը հաճիմ , կ՚ըսէ Տէրը ։
25 Ահա օրեր պիտի գան՝ կ՚ըսէ Տէրը ,
որ ամէն թլփատուածներուն ու
26 անթլփատներուն , Եգիպտոսին , և
Յուդային , ու Եդովմին , և Ամմո–
նի որդւոցը , ու Մովաբին , ու
[illegible] ծայրերը կտրող
անապատի բոլոր բնակիչներուն այ–
ցելութիւն պիտի ընեմ . վասն զի
ամէն ազգերը անթլփատ են , ու
բոլոր Իսրայէլի տունը՝ սրտով ան–
թլփատ է ։

ԳԼ . Ժ

1 Աստուծոյ և կուռքերուն աննմանութիւնը ։ 17 Մարգարէն գալու բարկութենէն փախչելու կը յորդորէ ժողովուրդը . 19 անմիտ հովիւներուն չար գործքերուն համար կ՚ողբայ , 23 ու խոնարհ աղաչանք մը կ՚ընէ ։

1 Ո՛վ Իսրայէլի տունը՝ Տէրոջը ձեզի
համար ըսած խօսքը մտի՛կ ը–
2 րէք ։ Տէրը այսպէս կ՚ըսէ . Ազ–
գերուն ճամբաները մի՛ սորվիք , ու
երկինքին նշաններէն մի՛ զարհու–
րիք . վասն զի անոնցմէ հեթանոս–
3 ները կը զարհուրին ։ Ինչու որ
ժողովրդոց սովորութիւնները ու–
նայնութիւն են . քանզի անտա–
ռէն փայտ կը կտրեն . անիկա՛ ա–
րուեստագէտին ձեռացը գործն է՝
4 տապարով [illegible] ։ Զանիկայ
արծաթով և ոսկիով կը զարդարեն ,
[illegible] գամերով և ուռերով կը գամեն
5 զանիկայ , ու չշարժիր ։ Անոնք
արմաւենիի պէս շիտակ են , բայց
չեն խօսիր . անոնք ՚ի հարկէ պի–
տի վերցուին , վասն զի չեն կրնար
քալել . անոնցմէ մի՛ վախնաք . վասն
զի չարիք մը չեն կրնար հասցը–
նել , ո՛չ ալ բարիք ընելու կարող
են ։
6 Ո՛վ Տէր՝ քեզի նման մէկը չկայ .
դուն մեծ ես , ու քու անունդ զօրու–
7 թեամբ մեծ է ։ Քեզմէ ո՛վ պիտի
չվախնայ՝ ո՛վ ազգաց Թագաւորը .
քանզի քեզի կը վայլէ . վասն զի
ազգաց բոլոր իմաստուններուն մէ–
ջը՝ և անոնց բոլոր թագաւորու–
թիւններուն մէջը քեզի նման մէկը
8 չկայ ։ Բայց անոնք բոլորովին
անբան ու անմիտ են . [illegible]
ունայնութեանց վարդապետու–
9 թիւն է . փայտ է ։ Թարսիսէն
ծեծուած արծաթ , և Ոփազէն
ոսկի կը բերուի . [illegible] վարպետի
ու ոսկերիչի ձեռացը գործքն են .
անոնց զգեստը կապուտակ ու ծի–
րանի է . ամէնը հանճարեղներու
10 գործքեր են ։ Սակայն Եհովան է
ճշմարիտ Աստուածը . անիկայ է
կենդանի Աստուածը , և յաւի–
տենական Թագաւորը . անոր բար–
կութենէն երկիրը կը դողայ . ու
ազգերը անոր սրտմտութեանը չեն

Margin references (left): Գլ․ Գ․ 17։ Է․ 24։ Գաղ․ Ա․ 14։ — Գլ․ Ը․ 14։ Իդ․ 15։ Ողբ․ Գ․ 15, 19։ Սաղ․ Ձ․ 5։ — Ղև․ Իզ․ 33։ Բ Օր․ ԻԸ․ 64։ — Ղև․ Իզ․ 33։ Գլ․ Խդ․ 27։ Եզեկ․ Ե․ 2, 12։ — Բ Մն․ ԼԵ․ 25։ Յոբ․ Գ․ 8։ Ժող․ ԺԲ․ 5։ Ամով․ Ե․ 16։ Մատ․ Թ․ 23։ — Գլ․ Ժդ․ 17։ — Գլ․ Զ․ 11։ — Գլ․ Ը․ 2։ Ժզ․ 4։ — Ժող․ Թ․ 11։ — Ա Կոր․ Ա․ 31։ Բ Կոր․ Ժ․ 17։ — Միք․ Զ․ 8։ Է․ 18։

Margin references (right): Ն․ Ք․ ԴՔ․ իրր 600 — Հռով․ Բ․ 8, 9։ — Գլ․ ԻԵ․ 23։ ԽԹ․ 32։ — *Կամ՝ Իրենց մազերուն ծայրերը եղող — Ղև․ Իզ․ 41։ Եզեկ․ Խդ․ 7։ Հռով․ Բ․ 28, 29։ — իրր 600 — Ղև․ ԺԸ․ 3։ Ի․ 23։ — Ես․ Խ․ 19, 20։ Խդ․ 9, 10։ Ծ․ Խե․ 20։ — Ես․ Խա․ 7։ Խզ․ 7։ — Սաղ․ ՃԺԵ․ 5։ ՃԼԵ․ 16։ Ա Մկ․ Բ․ 19։ Ա Կոր․ ԺԲ․ 2։ — Սաղ․ ՃԺԵ․ 7։ Ես․ Խզ․ 1, 7։ — Ես․ Խա․ 23։ — Ել․ ԺԵ․ 11։ Սաղ․ ՁԶ․ 8, 10։ — Յայտ․ ԺԵ․ 4։ — Սաղ․ ՁԹ․ 6։ — Սաղ․ ՃԺԵ․ 8։ Ես․ Խա․ 29։ Ամբ․ Բ․ 18։ Զաք․ Ժ․ 2։ Հռով․ Ա․ 21, 22։ — Դան․ Ժ․ 5։ — Սաղ․ ՃԺԵ․ 4։ — Ա Տիմ․ Զ․ 17։ — Սաղ․ Ժ․ 16։

Ն. Ք. Ք. Ա. Ի.
Իրր 600

* Ա. հատուածս Քաղդէացւոց լեզուաւ գրուած է ։
ՙ Տես Սաղ. ՂԶ. 5 ։
ՙ Հմր 15 ։ Ես. Բ. 18 ։ Զաք. ԺԳ. 2 ։
ՙ Ծն. Ա. 1, 6, 9 ։ Սաղ. ՃԼԶ. 5, 6 ։ Գլ. ԾԱ. 15 ։
ՙ Սաղ. ՂԳ. 1 ։
ՙ Յոբ. Թ. 8 ։ Սաղ. ՃԴ. 2 ։ Ես. Խ. 22 ։
ՙ Յոբ. ԼԸ. 34 ։
ՙ Սաղ. ՃԼԵ. 7 ։
ՙ Գլ. ԾԱ. 17, 18 ։
ՙ Առակ. Ը. 2 ։
ՙ Ես. ԽԲ. 17 ։ ԽԴ. 11 ։ ԽԵ. 16 ։
ՙ Ամբ. Բ. 18 ։
ՙ Հմր 11 ։
ՙ Սաղ. ԺԶ. 5 ։ ՀԶ. 26 ։ ՃԺԹ. 57 ։ Գլ. ԾԱ. 19 ։ Ողբ. Գ. 24 ։
ՙ Բ Օր. ԼԲ. 9 ։ Սաղ. ՀԴ. 2 ։
ՙ Ես. ԽԷ. 4 ։ ԾԱ. 15 ։ ԾԴ. 5 ։ Գլ. ԼԱ. 35 ։ ԼԲ. 18 ։ Ծ. 34 ։
ՙ Տես Գլ. Զ. 1 ։ Եզեկ. ԺԲ. 3, ։
ՙ Գլ. ԺԳ. 13 ։
† Եբր. պարտասխանութ. Թուագ. ԻԵ. 29 ։
ՙ Եզեկ. Գ. 10 ։
ՙ Գլ. Գ. 19 ։ Ը. 21 ։ Թ. 1 ։
ՙ Սաղ. ՀԵ. 10 ։
ՙ Մկք. Է. 9 ։
ՙ Գլ. Դ. 20 ։
ՙ Գլ. Ա. 15 ։ Դ. 6 ։ Ե. 15 ։ Զ. 22 ։
ՙ Գլ. Թ. 11 ։
ՙ Առակ. ԺԶ. 1 ։ Ի. 24 ։
ՙ Սաղ. Զ. 1 ։ ԼԸ. 1 ։ Գլ. Լ. 11 ։
ՙ Սաղ. ՀԹ. 6 ։
ՙ Յոբ. ԺԸ. 21 ։ Ա Թես. Դ. 5 ։ Բ Թես. Ա. 8 ։
ՙ Գլ. Ը. 16 ։

11 դիմանար ։ [ * Անոնց այսպէս ըսէք .
ՙ Այն աստուածները՝ որոնք երկինքը
ու երկիրը չշինեցին , ՙ երկրէ՝ ու աս
երկինքներուն տակէն պիտի կոր-
12 սուին ։ ] ՙ Երկիրը իր զօրութեամբը
շինեց . ՙ աշխարհքը իր իմաստու-
թեամբը հաստատեց , ու ՙ երկինքը
13 իր խորհրդովը տարածեց ։ ՙ Երբոր
իր ձայնը կու տայ , երկինքի մէջ
ջուրերու բազմութիւն կ՚ըլլայ . և
ՙ երկրի ծայրերէն շոգիներ կը հանէ .
անձրեւի համար փայլակներ կը շինէ ,
ու հով կը հանէ իր շտեմարաննե-
14 րէն ։ ՙ Ամէն մարդ ՙ գիտութենէ
զրկուած՝ անասուն դարձաւ . ՙ ամէն
ոսկերիչ՝ իր քանդակած կուռքին
պատճառաւը ամօթով եղաւ .
ՙ վասն զի ձուլած կուռքը սուտու-
թիւն է . ու անոնք հոգի չունին ։
15 Անոնք ունայնութեան և խաբէու-
թեան գործքեր են . անոնց այցե-
լութիւն եղած ատեն՝ ՙ անոնք պի-
16 տի կորսուին ։ ՙ Յակոբին Բաժինը
անոնց պէս չէ՛ . վասն զի անիկայ
ամէն բանը Ստեղծողն է , ու ՙ Իս-
րայէլը անոր ժառանգութեանը վի-
ճակն է . ՙ անոր անունը՝ ՙ Եհո-
վայ Սաբաւովթ է ։
17 Ո՛վ բերդի մէջ բնակող՝ ՙ քու
18 վաճառներդ երկրէն ժողվէ ։ Քան-
զի Տէրը այսպէս կ՚ըսէ . Ահա՛ ես
աս անգամ ՙ երկրին բնակիչները
† դուրս պիտի նետեմ , ու զանոնք
նեղութեան մէջ պիտի ձգեմ , ՙ որ
իրենց չարիքը գտնեն ։
19 ՙ Վա՜յ ինծի՝ իմ հարուածքիս
համար . իմ վէրքս անդարմանելի
է . բայց ես ըսի . ՙ Իրաւցընէ ասի-
կայ ցաւ է , ու ՙ զանիկայ քաշելու
20 եմ ։ ՙ Իմ վրանս կործանեցաւ , և
ամէն չուաններս փրթան . տղաք-
ներս ինծմէ ելան , ու չկան . ասկէ
ետև վրանս կանգնող , ու վարա-
21 գոյրներս դնող չկայ ։ Վասն զի
հովիւները անասուն դարձան , և
Տէրը չխնդրեցին . անոր համար
յաջողութիւն չգտան . ու անոնց
22 բոլոր հօտը ցրուեցաւ ։ Ահա՛
ՙ հիւսիսի երկրէն գուժի ձայն , և
մեծ խռովութիւն կու գայ՝ , որ
Յուդայի քաղաքները աւերակ՝ ու
ՙ ճագարներու բնակարան ընէ ։
23 Գիտեմ՝ ո՛վ Տէր , որ ՙ մարդուն
ճամբան իր ձեռքը չէ . քալող
մարդը՝ իր քալուածքը՝ շիտկելու
24 կարող չէ ։ Ո՛վ Տէր՝ ՙ զիս խրատէ ,
բայց չափաւորութեամբ , և ո՛չ թէ
քու բարկութեամբդ , չըլլայ որ
25 զիս սպառես ։ ՙ Քու սրտմտու-
թիւնդ՝ ՙ քեզ չճանչցող ազգերուն
վրայ , և քու անունդ չկանչող աղ-
գատոհմներուն վրայ թափէ . վասն
զի Յակոբը կերան . ՙ զանիկայ կե-
րան ու հատցուցին , և անոր բնա-
կութիւնը աւերակ դարձուցին ։

## ԳԼ. ԺԱ

1 Երեմիա կը հրատարակէ Աստուծոյ ուխտը ։ 8 ու անոր անհնազանդութիւն ընող հրէաները կը յանդիմանէ . 11 կը մարգարէանայ թէ չարիք պիտի գայ անոնց վրայ ։ 18 և Անաթովթի մարդոցը վրայ ։ զինքը սպաննելու խորհուրդ ընելնուն համար ։

1 Այն խօսքը որ Տէրոջը կողմանէ Ե-
2 րեմիային եղաւ՝ ըսելով . Աս
ուխտիս խօսքերը մտիկ ըրէք , և
Յուդայի մարդոցը ու Երուսաղէմի
3 բնակչացը խօսեցէ՛ք . Եւ դուն
անոնց ըսես . ՙ Իսրայէլի Տէր Աս-
տուածը այսպէս կ՚ըսէ . ՙ Անիծեա՜լ
ըլլայ այն մարդը՝ որ մտիկ չըներ աս
4 ուխտին խօսքերը , Որն որ ես ձեր
հայրերուն պատուիրեցի , Եգիպ-
տոսի երկրէն ՙ այն երկաթի հնոցէն
զանոնք հանած օրս՝ ու ըսի . ՙ Իմ
ձայնս մտիկ ըրէք , ու ձեզի բոլոր
հրամայածիս համեմատ ՚ի գործ
դրէք , որ դուք իմ ժողովուրդս ըլ-
լաք , ու ես ձեր Աստուածը ըլլամ .
5 Որպէս զի հաստատեմ այն ՙ երդու-
մը որ ձեր հայրերուն ըրի , անանկ
երկիր մը տալու անոնց՝ որ կաթ ու
մեղր կը բղխէ , ինչպէս որ այսօր
կ՚երեւնայ ։ Եւ ես պատասխան
տուի ու ըսի . Ամէն՝ ո՛վ Տէր ։
6 Եւ Տէրը ինծի ըսաւ . Աս բոլոր
խօսքերը Յուդայի քաղաքներուն
մէջ ու Երուսաղէմի փողոցներուն
մէջ կանչելով ըսէ . Աս ուխտին
խօսքերը մտիկ ըրէք , ու ՙ զանոնք
7 ՚ի գործ դրէք . Վասն զի ձեր հայ-
րերը փութով խրատեցի , զանոնք
Եգիպտոսի երկրէն հանած օրէս
մինչև աս օրս . ՙ կանուխ ելլելով
ու խրատելով ըսի . Իմ ձայնս
8 մտիկ ըրէք ։ ՙ Բայց անոնք մտիկ
չըրին , ու իրենց ականջը չխոնար-
հեցուցին . ՙ Հապա ամէն մարդ իր
չար սրտին կամակորութեանը հա-
մեմատ քալեց . ուստի ես անոնց
վրայ կը բերեմ աս ուխտիս բոլոր
խօսքերը , որն որ ես անոնց պա-
տուիրեցի որ ընեն , ու անոնք չը-
9 րին ։ . Եւ Տէրը ինծի ըսաւ .
ՙ Յուդայի մարդոցը մէջ , ու Երու-
սաղէմի բնակչացը մէջ դաւաճա-
10 նութիւն գտնուեցաւ . Անոնք՝ իմ
խօսքերս մտիկ ընել չուզող ՙ իրենց
նախահարցը անօրէնութիւններուն
դարձան , և օտար աստուածներու
ետևէ գացին , որ անոնց ծառա-
յութիւն ընեն . Իսրայէլի տունը
ու Յուդայի տունը՝ իրենց հայրե-
րուն հետ ըրած ուխտս աւրեցին ։
11 Անոր համար Տէրը այսպէս կ՚ը-
սէ . Ահա՛ ես անանկ չարիք կը
բերեմ անոնց վրայ , որ անկէ ելլե-

Ն. Ք. Ք. Ա. Ի.
Իրր 600

Իրր 608

ՙ Բ Օր. ԻԷ. 26 ։ Գաղ. Գ. 10 ։
ՙ Բ Օր. Դ. 20 ։ Գ Թագ. Ը. 51 ։
ՙ Ղև. ԻԶ. 3, 12 ։ Գլ. Է. 23 ։
ՙ Բ Օր. Է. 12, 13 ։ Սաղ. ՃԵ. 9, 10 ։
ՙ Հռով. Բ. 13 ։ Յակ. Ա. 22 ։
ՙ Գլ. Է. 13, 25 ։ ԼԵ. 15 ։
ՙ Գլ. Է. 26 ։
ՙ Գլ. Գ. 17 ։ Է. 24 ։ Թ. 14 ։
ՙ Եզեկ. ԺԲ. 25 ։ Ովս. Գ. 9 ։
ՙ Եզեկ. Ի. 18 ։

լու կարող պիտի չըլլան . և ինծի
պիտի աղաղակեն , ու անոնց մտիկ
12 պիտի չընեմ ։ Եւ Յուդայի քա-
ղաքները ու Երուսաղէմի բնակիչ-
ները պիտի երթան , ու պիտի ա-
ղաղակեն այն աստուածներուն՝ ո-
րոնց խունկ ծխեր էին . բայց անոնց
ձախորդութեան ժամանակը՝ բնաւ
13 պիտի չազատեն զանոնք ։ Քանզի
քու աստուածներդ ով Յուդա՝
քու քաղաքներուդ թուոյն չափ
եղան . ու Երուսաղէմի փողոցնե-
րուն թուոյն չափ՝ ամօթալից իր-
ողութեան համար սեղաններ ,
Բահաղին խունկ ծխելու համար՝
14 սեղաններ կանգնեցիք ։ Ուստի
դուն աս ժողովուրդին համար
աղօթք մի՛ ըներ , ու անոնց համար
խնդրուածքով ու պաղատանքով
մի աղաչեր . քանզի երբոր իրենց
վրայ հասած չարիքին համար ինծի
աղաղակեն , անոնց մտիկ պիտի չը-
նեմ ։
15 Իմ սիրելիս ի՞նչ բան ունի
իմ տանս մէջ , որովհետև շա-
տերուն հետ անօրէնութիւն գոր-
ծեր է . ու սուրբ միսն ալ քեզմէ պիտի
վերցուի , քանզի բուն քու չարու-
16 թիւնովդ կ'ուրախանաս ։ Տէրը՝
քու անունդ՝ կանանչ , գեղեցիկ
ու բարեպտուղ ձիթենի կոչեց .
բայց անոր վրայ մեծ աղմուկի ձայ-
նով կրակ բռնկցուց . և անոր
17 ոստերը կոտրեցան ։ Ու քեզ տըն-
կող զօրաց Տէրը քու վրայովդ չա-
րիք խօսեցաւ , Իսրայէլի տանը ու
Յուդայի տանը չարութեանը հա-
մար՝ որ անոնք գործեցին , և Բա-
հաղին խունկ ծխելով՝ զիս բարկա-
ցուցին ։
18 Եւ Տէրը ինծի գիտցուց , ու գի-
տցայ զանիկայ . այն ատենը ինծի ա-
19 նոնց գործքերը ցուցուցիր ։ Բայց
ես մորթուելու տարուող ընտանե-
ցած գառի մը պէս էի , ու չէի գի-
տեր որ անոնք ինծի համար նեն-
գութիւններ կը հնարէին , ըսելով .
Ծառը իր պտուղովը կործանենք ,
և զանիկայ կենդանեաց երկրէն
բնաջինջ ընենք . որ անոր անունը
20 մէյմըն ալ չյիշուի ։ Սակայն ով
Տէր զօրութեանց՝ արդար Դատա-
ւոր , որ երիկամունքը ու սիրտը
կը քննես , անոնցմէ վրէժխնդրու-
թիւնդ տեսնեմ . քանզի իմ դատս
քեզի յայտնեցի ։
21 Ուստի Տէրը այսպէս կ'ըսէ Անա-
թովթի մարդոցը համար՝ որոնք
քու հոգիդ կը փնտռեն , ու կ'ը-
սեն . Տէրոջը անունովը մարգա-
րէութիւն մի՛ ըներ , որ մեր ձեռ-
22 քերովը չմեռնիս ։ Անոր համար
զօրաց Տէրը այսպէս կ'ըսէ . Ահա
ես անոնց այցելութիւն պիտի ը-
նեմ . կտրիճները սրով պիտի մեռ-
նին . անոնց տղաքները ու աղջիկ-
23 ները սովամահ պիտի ըլլան ։ Եւ
անոնք մնացորդ պիտի չունենան .
վասն զի ես Անաթովթի մարդոցը
վրայ անոնց այցելութեան տա-
րին՝ չարիք պիտի բերեմ ։

## ԳԼ. ԺԲ

1 Երեմիա կը գանգատի չարերուն յաջողութեա-
նը համար , բայց հաւատքով անոնց կործա-
նումը կը տեսնէ . 5 Տէրոջմէ կը յայտնուի
իրեն՝ իր եղբայրներուն նենգութիւնը որ իրեն
դէմ կը հնարեն ։ 7 Աստուած իր ժառանգու-
թեանը վրայ կ'ողբայ . 14 ապաշխարողներուն
գերեդարձութիւն կը խոստանայ ։

1 Ո՛վ Տէր՝ երբոր քեզի հետ վիճիմ ,
դուն արդար պիտի գտնուիս .
սակայն քեզի իրաւունքի վրայով
պիտի խօսիմ . ինչո՞ւ ամբարիշտ-
ներուն ճամբան յաջող է , ու բո-
լոր նենգութիւն ընողները հանդըս-
2 տութիւն կը վայելեն ։ Դուն զա-
նոնք տնկեցիր , և անոնք արմա-
տացան ։ Անոնք կ'աճին , ու պը-
տուղ կու տան . դուն անոնց բեր-
նին մօտ ես , բայց անոնց երիկա-
3 մունքէն հեռու ես ։ Եւ դուն ով
Տէր՝ զիս գիտես . զիս տեսար , ու
իմ սիրտս քու առջևդ քննեցիր .
զատէ անոնք մորթուելու ոչխար-
ներու պէս , և սպանման օրուան
4 համար պատրաստէ ։ Մինչև ե՞րբ
երկիրը սուգ պիտի բռնէ , ու բը-
նակչացը չարութեանը համար , ու
բոլոր դաշտին խոտը պիտի չորնայ .
Անասունները ու թռչունները
կորսուեցան . վասն զի ըսին . Անի-
կայ մեր վախճանը պիտի չտեսնէ ։
5 Թէ որ դուն հետևակներուն հետ
վազեցիր , ու քեզ յոգնեցուցին ,
հապա ձիաւորներու հետ ի՞նչպէս
ասպարէզը պիտի մտնես . և դուն
որ խաղաղութեան երկրին մէջ ա-
պահով ես , ի՞նչ պիտի ընես՝ երբ
որ Յորդանան գետը բարձրանայ ։
6 Քանզի քու եղբայրներդ՝ ու քու
հօրդ տունն ալ՝ անոնք անգամ քե-
զի դէմ նենգութիւն ըրին , և քու
ետևէդ բարձրաձայն աղաղակեցին .
թէև անոնք քեզի աղէկ բաներ ալ
խօսին , դուն անոնց մի հաւա-
տար ։
7 Իմ տունս թողուցի . իմ ժա-
ռանգութիւնս ձգեցի . Հոգիիս
սիրածը՝ իր թշնամիներուն ձեռքը
8 տուի ։ Իմ ժառանգութիւնս ան-
տառի առիւծին պէս եղաւ ինծի .
անիկայ իր ձայնովը իմ վրաս պո-
ռաց . աս պատճառով զանիկայ ա-
9 տեցի ։ Միթէ իմ ժառանգու-
թիւնս՝ գիշատիչ թռչունի մը
պէս եղաւ ինծի . թռչունները ա-

Ն. Ք. ԳՃ. 608

Սաղ. ժը. 41 ։ Առակ. ա. 28 ։ Ես. ա. 15 ։ Գլ. ժգ. 12 ։ Եզեկ. ը. 18 ։ Միք. գ. 4 ։ Զաք. է. 13 ։
Բ Օր. լբ. 37. 38 ։
Գլ. բ. 28 ։
Ել. լբ. 10 ։ Գլ. է. 16 ։ ժդ. 11 ։ Յովհ. ե. 16 ։
Սաղ. ծ. 16 ։ Ես. ա. 11. 12 ։
Եզեկ. ժզ. 25 ։
Կամ՝ շատ անօրէնութիւններ
Անգ. բ. 12. 13. 14 ։ Տիտ. ա. 15 ։
Առակ. բ. 14 ։
Սաղ. ծբ. 8 ։ Հռովմ. ժա. 17 ։
Ես. ե. 2 ։ Գլ. բ. 21 ։
Գլ. ժը. 18 ։
Սաղ. ձգ. 4 ։
Սաղ. իէ. 13 ։ ճժզ. 9 ։ ճխբ. 5 ։
Ա Թագ. ժզ. 7 ։ Ա Մն. իը. 9 ։ Սաղ. է. 9 ։ Գլ. ժէ. 10 ։ ի. 12 ։ Յայտ. բ. 23 ։
Գլ. ժբ. 5. 6 ։
Ես. լ. 10 ։ Ամով. բ. 12 ։ է. 13. 16 ։ Միք. բ. 6 ։

Ն. Ք. ԳՃ. իբր 608

Գլ. իգ. 12 ։ խզ. 21 ։ խը. 44 ։ ծ. 27 ։ Ղու. ժթ. 44 ։

Սաղ. ծա. 4 ։
Կամ՝ դատաստաններուդ
Յոբ. ժբ. 6 ։ իա. 7 ։ Սաղ. լէ. 1. 35 ։ հգ. 3 ։ Գլ. ե. 28 ։ Ամբ. ա. 4 ։ Մաղ. գ. 15 ։
Ես. ի. 13 ։ Մատթ. ժե. 8 ։ Մար. է. 6 ։
Սաղ. ժէ. 3 ։ ճլթ. 1 ։
Գլ. ժա. 20 ։
Յակ. ե. 5 ։
Եբր. սրբէ՝ Կամ՝ նուիրէ ։
Գլ. իգ. 10 ։ Ովս. գ. 3 ։
Սաղ. ճէ. 34 ։
Գլ. դ. 25 ։ է. 20 ։ թ. 10 ։ Ովս. դ. 3 ։
Յես. գ. 15 ։ Ա Մն. ժբ. 15 ։ Գլ. խթ. 19 ։ ծ. 44 ։
Գլ. թ. 4 ։ ժա. 19. 21 ։
Առակ. իգ. 25 ։
Կամ՝ գիշատուած

Ն․ ք․ գ․ ք․ իրր 608

Ի Ես․ ծգ․ 9․ Գլ․ է․ 33․ Ժ Գլ․ գ․ 3․ Լ Ես․ ե․ 1, 5․ Հ Ես․ կզ․ 18․ Յ Հմր 4․ Ղ Ես․ խբ․ 25․

Նոր չորս կողմն են․ եկէ՛ք, անա-
պատին բոլոր գազանները ժողվե-
10 ցէ՛ք․ Եբերէ՛ք որ ուտեն։ Շատ
ծ հովիւներ ||իմ այգիս աւրեցին․
հ իմ բաժինս ոտնակոխ ըրին, և
իմ ցանկալի վիճակս՝ անապատի
11 ամայութեան դարձուցին։ Զա-
նիկայ ամայութեան դարձուցին․
յ ամայի ըլլալով՝ ||իմ առջևս
սուգ բռնեց․ բոլոր երկիրը ամայու-
թեան դարձաւ․ քանզի ղմարդ մը
12 չկայ որ զայն իրեն մտածէ։ Անա-
պատին ամէն բլուրներուն վրայ
աւարառուներ եկան․ վասն զի
երկրին մէկ ծայրէն մինչև մէկալ
ծայրը՝ Տէրոջը սուրը կ՚ուտէ․ և
ամէն մարմնոյ խաղաղութիւն չկայ։

Ճ Ղև․ իզ․ 16․ Բ Օր․ իը․ 38․ Միք․ զ․ 15․ Անգ․ ա․ 6․

13 *Ցորեն ցանեցին, բայց փուշեր
պիտի հնձեն․ աշխատանք քաշե-
ցին, բայց օգուտ պիտի չտեսնեն․
ու Տէրոջը սաստիկ բարկութեանը
համար՝ ձեր արդիւնքներէն պիտի
ամչնաք։

Մ Զաք․ բ․ 8․ Յ Տես Բ Օր․ Լ․ 3․ Գլ․ լբ․ 37․ Ն Եզեկ․ իը․ 25․ Շ Ամով․ թ․ 14․

14 Այսպէս կ՚ըսէ Տէրը իմ չար դը-
րացիներուս համար, որոնք իմ ժո-
ղովուրդիս Իսրայէլին տուած ժա-
ռանգութեանս մկը դպչին․ Ահա
ես յզանոնք իրենց երկրին երեսէն
պիտի խլեմ․ Յուդայի տունն ալ
15 անոնց մէջէն պիտի խլեմ։ Նու-
պիտի ըլլայ որ զանոնք խլելէս ետ-
քը՝ պիտի դառնամ անոնց ողոր-
միմ, շ և ամէն մէկը իր ժառանգու-
թեանը ու ամէն մէկը իր երկիրը
16 պիտի դարձրնեմ։ Եւ թէ որ ա-
նոնք իմ ժողովրդեանս ճամբաները
սորվին, ու ոիմ անունովս երդում
ընեն՝ ըսելով, Կենդանի է Տէր,
(ինչպէս որ անոնք իմ ժողովուր-
դիս՝ Բահաղին անունովը երդում
ընել սորվեցուցին․) ան ատենը
ւ իմ ժողովուրդիս մէջը պիտի
17 *հաստատուին։ պԲայց թէ որ
մտիկ չընեն, ան ատենը ան ազգը
արմատաքի պիտի խլեմ, ու պիտի
կորսնցընեմ, կ՚ըսէ Տէրը։

Ո Գլ․ դ․ 2․ Ւ Եփե․ բ․ 20, 21․ ա Պետ․ բ․ 5․ * Եբր․ շի-նուին․ Պ Ես․ կ․ 12․

ԳԼ․ ԺԳ

1 Եփրատ գետին քովը պահուած կտաւէ գօտիի մը օրինակով՝ Աստուած իր ժողովուրդին կոր-ծանումը կը ցուցընէ․ 12 գինիով լեցուն տի-կերու օրինակով՝ կը նախաձայնէ անոնց վրայ գալու թշուառութիւնը․ 15 կը յորդորէ զա-նոնք որ գալու դատաստաններուն առջևը առ-նեն․ 22 կը ցուցընէ թէ իրենց պղծութիւն-ներն է ասոնց պատճառը։

իրր 602

1 Տէրը ինծի այսպէս ըսաւ․ Գնա՛,
քեզի մէկ քթանէ գօտի մը ծա-
խու առ, և զանիկայ մէ՛ջքդ կապէ,
ու զանիկայ ջուրը մի՛ խոթեր։
2 Ուստի Տէրոջը խօսքին համեմատ՝
գօտին ծախու առի, ու մէջքս
3 կապեցի։ Եւ երկրորդ անգամ
Տէրոջը խօսքը ինծի եղաւ՝ ըսե-
4 լով․ Ան ծախու առած գօտիդ՝
որ քու մէջքիդ վրայ է, ա՛ռ ու
ելի՛ր Եփրատ գնա, և հոն վէմին
5 ծակին մէջը պահէ զանիկայ։ Ու-
ես գացի, և զանիկայ Եփրատի
եզերքը պահեցի, ինչպէս որ Տէրը
6 ինծի պատուիրեց։ Եւ շատ օրե-
րէն ետքը՝ Տէրը ինծի ըսաւ․
Ելի՛ր Եփրատ գնա՛, ու անկէ ա՛ռ
ան գօտին, որ քեզի հրամայեցի որ
7 հոն պահես։ Ես ալ Եփրատ գա-
ցի, ու փորելով՝ գօտին ան պա-
հած տեղէս առի․ և ահա՛ գօտին
փտեր էր, ու բնաւ մէկ բանի մը
8 չէր գար։ Եւ Տէրոջը խօսքը ին-
ծի եղաւ՝ ըսելով․ Տէրը այսպէս
9 կ՚ըսէ․ ռՅուդային հպարտու-
թիւնը, ու Երուսաղէմին մեծ
հպարտութիւնը այդպէս պիտի
10 աւրեմ։ Աս չար ժողովուրդը՝ որ
իմ խօսքերս լսել չեն ուզեր, ու
Ի իրենց սրտին կամակորութեամբը
կը քալեն, և օտար աստուածնե-
րու ետևէ կ՚երթան՝ անոնց ծա-
ռայութիւն ընելու, և անոնց եր-
կրպագութիւն ընելու համար,
աս անպիտան գօտիին պէս պիտի
11 ըլլան․ Վասն զի ինչպէս որ գօ-
տին մարդուն մէջքը կը փակչի,
բոլոր Իսրայէլի տունը ու բոլոր
Յուդայի տունը ինծի այնպէս
փակցուցեր էի՝ կ՚ըսէ Տէրը, գոր
ինծի ժողովուրդ ըլլան, Տնաև ա-
նուն, և փառք ու պարծանք․
բայց անոնք մտիկ չըրին։
12 Նաև աս խօսքը՝ ըսէ անոնց․
Իսրայէլին Տէր Աստուածը այսպէս
կ՚ըսէ․ Ամէն տիկ գինիով պիտի
լեցուի․ բայց անոնք քեզի պիտի
ըսեն․ Միթէ մենք չե՞նք գիտեր
որ ամէն տիկ գինիով պիտի լե-
13 ցուի։ Իսկ դուն անոնց ըսէ․
Տէրը այսպէս կ՚ըսէ․ Ահա՛ ես աս
երկրին բոլոր բնակիչները, ու
Դաւիթի աթոռին վրայ նստող
թագաւորները, և քահանաները,
ու մարգարէները, ու Երուսաղէմի
բոլոր բնակիչները Իարբեցութեամբ
14 պիտի լեցընեմ․ Եւ ղզանոնք
իրարու զարնելով պիտի կոտրտեմ,
հայրերը տղոցը հետ մէկտեղ՝ կ՚ըսէ
Տէրը․ և անոնց պիտի չգթամ, ու
պիտի չխնայեմ, և առանց ողոր-
մելու՝ զանոնք բնաջինջ պիտի ը-
նեմ։
15 Մտիկ ըրէք, ականջ տուէք,
մի՛ հպարտանաք․ վասն զի Տէրը
16 խօսեցաւ։ Իձեր Տէր Աստուծոյն
փառք տուէք, դեռ չխաւարը չբե-
րած, ու ձեր ոտքերը
մութ լեռներու վրայ չսահած,
և ձեր Բլոյսի սպասած ատենը Ա-
փոխած զանիկայ ժմահուան ստուե-

Ն․ ք․ գ․ ք․ իրր 602

Ռ Ղև․ իզ․ 19․

Ի Գլ․ թ․ 14․ ժա․ 8․ ժզ․ 12․

Գ Ել․ ժթ․ 5․ Տ Գլ․ լգ․ 9․

Ի Ես․ ծա․ 17, 21․ կզ․ 6․ Գլ․ իե․ 27․ ծա․ 7․ Ղ Սաղ․ բ․ 9․

Ի Յեսու․ է․ 19․ Ը Ես․ ե․ 30․ Ը․ 22․ Ամով․ Ը․ 9․ Բ Ես․ ծթ․ 9․ Ժ Սաղ․ խգ․ 19․

րի չփտխած , ու զանիկայ թանձր
17 մէգի չդարձուցած ։ Բայց թէ որ
մտիկ չընէք , ձեր հպարտութեանը
համար իմ հոգիս ծածուկ տե-
ղուանք պիտի լայ , և իմ աչքս
խիստ շատ լալով արցունք պիտի
թափէ . վասն զի Տէրոջը հօտը
գերի առնուեցաւ ։
18 Թագաւորին ու թագուհիին ը-
սէ . Ձեր անձը խոնարհեցուցէ՛ք ,
ու գետինը վրայ նստեցէք . վասն զի
ձեր գլխէն ձեր փառաց թագը ին-
19 կաւ ։ Հարաւային քաղաքները
գոցուեցան , ու բացող մը չկայ .
բոլոր Յուդան գերութեան գնաց .
20 ամէնը գերութեան գնաց ։ Աչ-
քերնիդ վերցուցէ՛ք , և Հիւսիսի
կողմէն եկողներուն նայեցէք . քե-
զի տրուած հօտը , քու փառացդ
21 խաշինքը ո՞ւր են ։ Ի՞նչ պիտի
ըսես՝ երբոր քեզի այցելութիւն
ընէ . վասն զի դուն անոնց սոր-
վեցուցիր որ քու վրադ իշխան և
գլուխ ըլլան . միթէ քեզ՝ ծննդա-
կան կնոջ պէս՝ ցաւեր պիտի
22 չբռնե՞ն ։ Ու թէ որ սրտիդ մէջը
ըսես . Աս բաները ինչո՞ւ հան-
դիպեցան ինծի . քու անօրէնու-
թեանդ շատութենէն քու քղ-
ղանցքներդ բացուեցան , և գար-
շապարներդ բռնութեամբ մերկա-
23 ցան ։ Միթէ կարելի՞ է որ Ե-
թէովպացին իր մորթը , կամ ինձը
իր խայտուցները փոխէ , որ դուք
ալ չարութիւն ընելու սորված ըլ-
լալով՝ կարենաք աղէկութիւն ը-
24 նել ։ Ուստի անապատի հովէն վեր-
ցուած յարդի պէս պիտի ցրուեմ
25 զանոնք ։ Աս է քու վիճակդ և
քու բաժինդ՝ որն որ ես քեզի որո-
շեցի , կ'ըսէ Տէրը . քանզի իս մոռ-
ցար , ու սուտութեան ապաւինե-
26 ցար ։ Ուստի ես ալ քու քղ-
ղանցքներդ՝ քու երեսիդ վրայ վեր-
ցուցի . ու քու անարգանքդ երև-
27 ցաւ ։ Ես քու շնութիւններդ , ու
վրնջիւններդ , և քու լիրբ պոռ-
նկութիւնդ , որ բլուրներու վը-
րայ , և դաշտի վրայ քու ըրած
պղծութիւններդ տեսայ . վա՜յ քե-
զի , ո՛վ Երուսաղէմ . պիտի չմաք-
րուի՞ս արդեօք . մինչև ե՞րբ ։

## ԳԼ. ԺԴ

1 Մեծ սովին համար՝ 7 Երեմիան կ'աղօթէ ։ 10 Տէրը չուզեր մտիկ ընել աս աղօթքը՝ ժողովուրդին չարութեանը համար . 13 կը ցուցընէ թէ՝ իրենց մէջը սուտ մարգարէներ ըլլալովը իրենք չեն կրնար արդարանալ ։ 17 Երեմիա անոնց վրայ կ'ողբայ ։

1 Տէրոջը խօսքը որ Երեմիային եղաւ՝
2 երաշտութեան վրայով ։ Յու-
դան սուգ կը բռնէ , և անոր դըռ-
ները կը նուաղին . անոնք գետնի
վրայ տրտում կը նստին . ու Ե-
րուսաղէմի աղաղակը վեր ելաւ ։
3 Եւ անոնց ազնուականները՝ իրենց
երիտասարդները ջուրի կը խրկեն .
աւազանները գացին , ջուր չգտան ,
և դարձան՝ իրենց ամանները պա-
րապ բերելով . ամչցան ու պատ-
կառեցան , և գլուխնին ծածկե-
4 ցին ։ Երկրին վրայ անձրև չըլլալուն
պատճառովը գետինը ճաթելուն
համար , երկրագործները ամչցան ,
5 և գլուխնին ծածկեցին ։ Քանզի
նաև եղնիկը դաշտի մէջ ծնաւ , ու
խոտ չըլլալուն համար ձագը թո-
6 ղուց ։ Ու վայրենի էշերը բլուր-
ներու վրայ կայնեցան , և ճագար-
ներու պէս օդը ծծեցին , ու աչքեր-
նին տկարացաւ , վասն զի խոտ չը-
կար ։
7 Թէև մեր անօրէնութիւնները
մեզի դէմ *ելեր են , սակայն ո՛վ
Տէր՝ Դուն անուանդ համար ըրէ՛ .
քանզի մեր յանցանքները շատ են .
8 քեզի դէմ մեղք գործեցինք ։ Ո՛վ
Իսրայէլին Յոյսը՝ նեղութեան ա-
տենը անոր Փրկիչը , ինչո՞ւ համար
երկրի վրայ հիւրի պէս , ու գիշերը
իջևան ընելու դարձող ճամբորդի
9 պէս ըլլաս ։ Ինչո՞ւ համար ապ-
շած մարդու պէս , և ազատելու
կարողութիւն չունեցող հզօրի մը
պէս ըլլաս . և դուն ո՛վ Տէր՝ մեր
մէջն ես , ու քու անունդ մեր վրայ
կոչուած է . մեզ մի՛ թողուր ։
10 Այսպէս կ'ըսէ Տէրը աս ժողո-
վուրդին համար . Անոնք աստան-
դական շրջիլը այսպէս սիրեցին , և
իրենց ոտքերը չզսպեցին . ուստի
Տէրը անոնց չհաւնեցաւ . Հիմա
անոնց անօրէնութիւնը պիտի յի-
շէ , ու անոնց մեղքերուն այցելու-
11 թիւն պիտի ընէ ։ Եւ Տէրը ինծի
ըսաւ . Աս ժողովուրդին բարիք
ըլլալու համար աղօթք մի՛ ըներ ։
12 Թէ որ անոնք ծոմ պահեն , անոնց
աղաղակը մտիկ պիտի չընեմ . ու
թէ որ ողջակէզ կամ ընծայ մատու-
ցանեն , զանոնք պիտի չընդունիմ .
հապա սրով , սովով և ժանտախ-
13 տով պիտի սպառեմ զանոնք ։ Ու
ես ըսի . Աւա՜ղ՝ ո՛վ Տէր Եհովայ ,
ահա մարգարէները անոնց կ'ըսեն .
Սուր պիտի չտեսնէք , ու ձեր մէջը
սով պիտի չըլլայ . հապա ձեզի աս
տեղս ճշմարիտ խաղաղութիւն պի-
14 տի տամ ։ Ան ատենը Տէրը ինծի
ըսաւ . Մարգարէները իմ անու-
նովս սուտ մարգարէութիւն կ'ը-
նեն . զանոնք ես չխրկեցի , և ա-
նոնց չհրամայեցի , ու անոնց չխօ-
սեցայ . անոնք ձեզի սուտ տեսիլք-
ներ , սնոտի գուշակութիւններ , և
իրենց սրտին խաբէութիւնները կը

Ն. Ք. ՉԲ.
Իրր 602

Է Գլ. Թ. 1. Ժգ. 17. Ողբ. Ա. 2. 16. Բ. 18.
Ը Տես Դ Թագ. Իդ. 12. Գլ. Իբ. 26.
Թ Գլ. Զ. 22.
Ժ Գլ. Զ. 24.
Ի Գլ. Ե. 19. Ժզ. 10.
Լ Ես. Գ. 17. Խէ. 2, 3. Հմր 26. Եզեկ. Ժզ. 37, 38, 39. Նաւ. Գ. 5.
Ծ Սաղ. Ա. 4. Ովս. Ժգ. 3.
Կ Յոբ. Ի. 29. Սաղ. Ժա. 6.
Հ Գլ. Ժ. 14.
Ձ Հմր 22. Ողբ. Ա. 8. Եզեկ. Ժզ. 37. Իգ. 29. Ովս. Բ. 10.
Ղ Գլ. Ե. 8. Ես. Կե. 7. Գլ. Բ. 20. Գ. 2, 6. Եզեկ. Զ. 13.

Իրր 601

Ա Ես. Գ. 26.

Ն. Ք. ՉԱ.
Իրր 601

Բ Տես Ա Թագ. Ե. 12.
Գ Սաղ. Խ. 14.
Դ Բ Թագ. ԺԵ. 30.
Ե Գլ. Բ. 24.
* Եբր. պատասխան տուեր
Զ Սաղ. Իե. 11.
Է Գլ. ԺԷ. 13.
Ը Ես. ԾԹ. 1.
Թ Ել. ԻԹ. 45, 46. Ղև. Իզ. 11, 12.
Ժ Դան. Թ. 18, 19.
Ի Տես Գլ. Բ. 23, 24, 25.
Լ Ովս. Ը. 13. Թ. 9.
Խ Ել. Լբ. 10. Գլ. Է. 16. Ժա. 14.
Ծ Առակ. Ա. 28. Ես. Ա. 15. Ծը. 3. Գլ. Ժա. 11. Եզեկ. Ը. 18. Միք. Գ. 4. Զաք. Է. 13.
Կ Գլ. Զ. 20. Է. 21, 22.
Հ Գլ. Թ. 16.
Ձ Գլ. Դ. 10.
Ղ Գլ. ԻԷ. 10.
Ճ Գլ. Իգ. 21. ԻԵ. 15. ԻԹ. 8, 9.

15 մարգարէանան ։ Ուստի Տէրը այս-
պէս կ'ըսէ . Ան մարգարէներուն
համար , որոնք իմ անունովս մար-
գարէութիւն կ'ընեն , ( թէպէտև
զանոնք ես չխրկեցի , ) ք ու կ'ըսեն
թէ՝ Աս երկրիս մէջը սուր ու սով
պիտի չըլլայ , ան մարգարէները
սրով ու սովով պիտի կորսուին .
16 Եւ ան ժողովուրդը՝ որոնց անոնք
մարգարէութիւն կ'ընեն , սուրին
ու սովին պատճառովը Երուսաղէմի
փողոցները պիտի ձգուին . և զա-
նոնք , անոնց կնիկները , տղաքնե-
րը ու աղջիկները յ թաղող պիտի
չգտնուի . ու անոնց վրայ՝ իրենց
չարութիւնը պիտի թափեմ ։
17 Ուստի անոնց աս խօսքը զրու-
ցես . ՚ Գիշեր ու ցորեկ աչքերս
արցունք պիտի թափեն , ու բնաւ
պիտի չդադարին . ՟ վասն զի իմ
ժողովուրդիս կոյս աղջիկը մեծ կո-
տորածով , խիստ սաստիկ հա-
18 րուածով կոտրեցաւ ։ Թէ որ
ա դաշտը ելլեմ՝ ահա սրով մեռ-
ցուածներ , և թէ որ քաղաքը
մտնեմ , ահա սովով տկարացած-
ներ կան . վասն զի թէ մարգարէն
և թէ քահանան իրենց չգիտցած
երկիրը կը պտըտին ։
19 ՟ Միթէ Յուդան բոլորովին մեր-
ժեցի՞ր . քու հոգիդ Սիօնէն զզուե-
ցա՞ւ . մեզի ինչո՞ւ այնպէս զարկիր՝
՟ որ մեզի բժշկութիւն չկայ . ՟ Մենք
խաղաղութեան սպասեցինք , բայց
բարութիւն չկար . բժշկութեան
ժամանակին սպասեցինք , բայց ահա
20 խռովութիւն էկաւ ։ Մենք ով
Տէր՝ մեր ամբարշտութիւնը ու մեր
հայրերուն անօրէնութիւնը գի-
տենք . վասն զի ՟ քեզի դէմ մեղք
21 գործեցինք ։ Քու անուանդ հա-
մար մեզ մի՛ զզուիր . քու փա-
ռացդ աթոռը մի՛ անարգեր . ՟ մեզի
հետ ըրած ուխտդ յիշէ , և անիկայ
22 մի՛ աւրեր ։ Միթէ հեթանոսաց
ունայնութիւններուն մէջ ՟ անձրև
տուող մը կա՞յ , կամ թէ անձրևը
երկինքնե՞րը կու տան . ՟ չէ՞ որ աս-
կայ ընողը դուն ես , ով մեր Տէր
Աստուածը . ուստի քեզի կը յու-
սանք . վասն զի ասոնց ամէնը դուն
ըրիր ։

Ն . ք . գք . իբր 601

ք Գլ . ե . 12 , 13 ։

յ Սաղ . հթ . 8 ։

՚ Գլ . թ . 1 ։ ժգ . 17 ։ Ողբ . ա . 16 ։ բ . 18 ։

՟ Գլ . ը . 21 ։

ա Եզեկ . է . 15 ։

՟ Ողբ . ե . 22 ։

՟ Գլ . ժե . 18 ։

՟ Գլ . ը . 15 ։

՟ Սաղ . ճզ . 6 ։ Դան . թ . 8 ։

՟ Սաղ . հդ . 2 , 20 ։ ճզ . 45 ։

՟ բ Օր . լբ . 21 ։

՟ Զաք . ժ . 1 , 2 ։

՟ Սաղ . ճլե . 7 ։ ճխէ . 8 ։ Եզ . լ . 23 ։ Գլ . ե . 24 ։ ժ . 13 ։

## ԳԼ . ԺԵ

1 Հրէաներուն բոլորովին մերժուիլը ; ու անոնց վրայ գալու զանազան դատաստանները ։ 10 Երեմիա անոնց ատելութեանը համար գանգատ ընելով՝ իրեն համար խոստմունք մը կ'ընդունի , 12 ու անոնց համար սպառնալիք մը ։ 15 Ինքը աղօթք կ'ընէ , 19 ու բարի խոստմունք մը ձեռք կը բերէ ։

1 Եւ Տէրը ինծի ըսաւ . ՟ Թէև
բ Մովսէս ու գ Սամուէլ իմ առ-
ջևս կայնելու ըլլային , աս ժողո-
վուրդին վրայ հաճութիւն պիտի
չունենայի . զանոնք առջևէս վռ-
2 ռընտէ , ու թող ելլեն ։ Եւ թէ
որ քեզի՝ Ո՞ւր ելլենք ըսեն , ան ա-
տենը անոնց ըսես . Տէրը այսպէս
կ'ըսէ . ՟ Մահուան համար որոշ-
ուածները՝ մահուան , ու սուրի
համար որոշուածները՝ սուրի , և սո-
վի համար որոշուածները՝ սովի , ու
գերութեան համար որոշուածները՝
3 գերութեան էլլեն ։ Եւ ՟ անոնց
վրայ չորս տեսակ պատիժ պիտի
խրկեմ՝ կ'ըսէ Տէրը . մեռցընելու
համար՝ սուրը , ու պատռելու հա-
մար շուները , և ուտելու ու ապա-
կանելու համար՝ ՟ երկինքի թռչ-
չուններն ու երկրի գազանները ։
4 Եւ ՟ զանոնք նեղութիւն կրելու
համար երկրիս բոլոր թագաւորու-
թիւններուն ձեռքը պիտի մատ-
նեմ , Յուդայի թագաւորին Եզե-
կիայի որդւոյն ՟ Մանասէին պատ-
ճառաւը՝ անոր Երուսաղէմի մէջ
5 ըրած բաներուն համար ։ Վասն
զի ՟ ո՞վ քեզի պիտի խնայէ՝ ով
Երուսաղէմ , ու ո՞վ քեզի ցաւակից
պիտի ըլլայ , և քու ողջութիւ-
նըդ հարցընելու համար ո՞վ պիտի
6 դառնայ ։ ՟ Դուն իս թողուցիր՝
կ'ըսէ Տէրը , ՟ ետ գացիր . ես
ալ իմ ձեռքս քու վրադ պիտի
երկնցընեմ , և քեզ պիտի կորսըն-
ցընեմ . ՟ գթութիւն ընելէն ձանձ-
7 րացայ ։ Ու զանոնք երկրին դռնե-
րուն մէջը պիտի հոսեմ իբր ի
հեծանոցով . իմ ժողովուրդս ան-
զաւակ պիտի թողում և պիտի
կորսընցընեմ . ՟ վասն զի ՟ անոնք ի-
8 րենց ճամբաներէն չդարձան ։ Ա-
նոնց որբևարիները ծովուն աւազէն
աւելի շատցան իմ առջևս . * անոնց
վրայ ու երիտասարդին մօրը վրայ
կէս օրուան ատենը աւարառու
բերի . անոր վրայ յանկարծ արհա-
9 ւիրք ու սոսկում ձգեցի ։ ՟ Եօթը
զաւակ ծնանողը նուաղեցաւ . իր
հոգին աւանդեց . ՟ ցորեկուան ա-
տենը անոր արևը մտաւ . անիկայ
ամչցաւ ու պատկառեցաւ . և ա-
նոնց մնացորդը՝ իրենց թշնամեացը
առջևը՝ սուրի պիտի մատնեմ ,
կ'ըսէ Տէրը ։
10 ՟ Վա՜յ ինծի՝ ով մայրս , որ զիս
բոլոր երկրին համար կռիւի մարդ
ու վէճի մարդ ծնար . ոչ ես շահով
ստակ տուի , ոչ ալ ինծի շահով
ստակ տուին . սակայն ամէնը ինծի
11 անէծք կու տան ։ Տէրը կ'ըսէ որ՝
Անշուշտ քեզ պիտի ազատեմ , ու
երջանիկ պիտի ըլլաս . և անշուշտ
նեղութեան ու տառապանաց ժա-
մանակը՝ ՟ թշնամիդ քեզի աղաչել
12 պիտի տամ ։ Միթէ երկաթը՝

Ն . ք . գք . իբր 601

իբր 601

ա Եզեկ . ժդ . 14 , ևն ։

բ Ել . լբ . 11 . 12 ։ Սաղ . ղթ . 6 ։

գ ա Թագ . է . 9 ։

՟ Գլ . խգ . 11 ։ Եզեկ . ե . 2 . 12 ։ Զաք . ժա . 9 ։

՟ Տես Ղև . իզ . 16 , ևն ։

՟ բ Օր . իը . 26 ։ Գլ . է . 33 ։

՟ բ Օր . իը . 25 ։ Գլ . իդ . 9 ։ Եզեկ . իդ . 46 ։

՟ դ Թագ . իա . 11 , ևն ։ իգ . 26 ։ իդ . 3 , 4 ։

՟ Ես . ծա . 19 ։

՟ Գլ . բ . 13 ։

՟ Գլ . է . 24 ։

՟ Ովս . ժգ . 14 ։

՟ Ես . թ . 13 ։ Գլ . ե . 3 ։ Ամով . դ . 10 . 11 ։

* կամ՝ անոնց երիտասարդներուն

՟ ա Թագ . բ . 5 ։

՟ Ամով . ը . 9 ։

՟ Յոբ . գ . 1 , ևն ։ Գլ . ի . 14 ։

՟ Գլ . լթ . 11 , 12 ։ խ . 4 , 5 ։

Ն. Ք. Դ. Ք. ԻՐ 601

հիւսիսի երկաթը ու պղինձը կը
13 կոտրէ՞ ։ Քու բոլոր մեղքերուդ
համար՝ բոլոր սահմաններուդ մէջ՝
քու ստացուածքդ ու գանձերդ
աւարի պէս յափշտակութեան պի-
14 տի մատնեմ ։ Եւ քու
թշնամիներուդ հետ քու չգիտցած
երկիրդ պիտի փոխադրեմ ։ վասն
զի իմ բարկութենէս կրակ վա-
ռեցաւ, որ ձեր վրայ պիտի բոր-
բոքի ։
15 Ո՛վ Տէր՝ դուն կը ճանչնաս զի-
տես ։ զիս յիշէ, և ինծի այցելու-
թիւն ըրէ, ու իմ հալածիչներէս
իմ վրէժս առ ։ քու երկայնմտու-
թեանդ համար զիս մի՛ վերցըներ ։
գիտցիր որ քեզի համար նախա-
16 տինք կրեցի ։ Ես քու խօսքերդ
գտածիս պէս՝ զանոնք կերայ ։ և
քու խօսքդ իմ սրտիս ցնծու-
թիւն և ուրախութիւն եղաւ ։
վասն զի քու անունդ իմ վրաս
կոչուած է՝ ո՛վ զօրաց Տէր Աս-
17 տուածը ։ Խաղցողներուն
ժողովքին մէջ չնստայ, ու չուրա-
խացայ ։ քու ձեռքիդ պատճառո-
վը առանձին նստայ ։ վասն զի քու
բարկութիւնովդ զիս լեցուցիր ։
18 Ինչո՞ւ իմ ցաւս մշտնջենաւոր, և
իմ վէրքս անդարմանելի է ։ անի-
կայ բժշկուիլ չուզեր ։ դուն ինծի
բոլորովին սուտ ու անհաւատա-
րիմ ջուրերու պէ՞ս պիտի ըլլաս ։
19 Անոր համար Տէրը այսպէս կ'ը-
սէ ։ Թէ որ դառնաս, ես քեզ նոր
պիտի բերեմ ։ ու իմ առջևս պի-
տի կայնիս ։ և թէ որ պատուա-
կանը անարգէն որոշես, իմ բերնիս
պէս պիտի ըլլաս ։ անոնք քեզի
դառնան, բայց դուն անոնց մի՛
20 դառնար ։ Ու քեզ աս ժողովուր-
դին՝ պղնձէ ամուր պարիսպի պէս
պիտի ընեմ ։ և քեզի հետ պիտի
պատերազմին, բայց պիտի չկրնան
քեզ յաղթել ։ վասն զի ես քեզի
հետ եմ՝ քեզ փրկելու ու ազա-
21 տելու համար, կ'ըսէ Տէրը ։ Եւ
քեզ չարերուն ձեռքէն պիտի ա-
զատեմ, ու բռնաւորներուն ձեռ-
քէն պիտի փրկեմ ։

Սղմ. ԽԴ. 12։ Գլ. ԺԷ. 3։
* կամ՝ քու թշնամիներդ քու չգիտցած երկրէդ պիտի բերեմ։
Գլ. ԺԶ. 13։ ԺԷ. 4։
Բ Օր. ԼԲ. 22։
Գլ. ԺԲ. 3։
Գլ. ԺԱ. 20։ Ի. 12։
Սղմ. ԿԹ. 7։
Եզեկ. Գ. 1, 3։ Յայտ. Ժ. 9, 10։
Յոբ. ԻԳ. 12։ Սաղ. ՃԺԹ. 72, 111։
Սաղ. Ա. 1։ ԻԶ. 4, 5։
Գլ. Լ. 15։
Յոբ. Զ. 15, 
Զաք. Գ. 7։
Հռմ 1։
Եզեկ. ԻԲ. 26։ ԽԴ. 23։
Գլ. Ա. 18։ Զ. 27։
Գլ. Ի. 11։

## ԳԼ. ԺԶ

1 Մարգարէն իր ամուսնութենէ հրաժարելուն, և սուգի ու կոչունքի տուներ չերթալուն օրինակովը՝ Հրէից կործանումը կը նախաձայնէ, 10 իրենց հայրերէն աւելի չարութիւն ընելնուն համար ։ 14 Անոնց գերեդարձութիւնը՝ իրենց Եգիպտոսէն ազատուելէն աւելի զարմանալի գործ մը պիտի ըլլար ։ 16 Աստուած կրկին հատուցում պիտի ընէր իրենց կռապաշտութեանը համար ։

1 Նու Տէրոջը խօսքը ինծի եղաւ, ը-
2 սելով ։ Քեզի կնիկ մի՛ առներ,
ու աս տեղս տղաքներ ու աղջիկ-
3 ներ չունենաս ։ Քանզի աս տեղս
ծնած տղաքներուն ու աղջիկնե-
րուն համար, և աս երկրիս մէջ
զանոնք ծնանող մայրերուն հա-
մար, ու զանոնք ծնանող հայրե-
րուն համար, Տէրը այսպէս կ'ըսէ ։
4 Անոնք մահաբեր հիւանդու-
թիւններով պիտի մեռնին ։ անոնց
համար սուգ պիտի չընուի, ու
անոնք պիտի չթաղուին ։ երկրի
երեսին վրայ աղբի պէս պիտի ըլ-
լան, և սրով ու սովով պիտի
հատնին ։ և անոնց դիերը երկին-
քի թռչուններուն, ու երկրի գա-
զաններուն կերակուր պիտի ըլլան ։
5 Քանզի Տէրը այսպէս կ'ըսէ ։ Սու-
գի տուն մի՛ մտներ, ու լալու մի՛
երթար, և անոնց համար մի՛ ող-
բար ։ վասն զի իմ խաղաղութիւնս
աս ժողովուրդէն վերցուցի՝ կ'ըսէ
Տէրը, ողորմութիւնը ու գթու-
6 թիւնը ։ Ու աս երկրիս
մէջ մեծերը ու պզտիկները պիտի
մեռնին, ու պիտի չթաղուին ։ ու
անոնց համար սուգ պիտի չընեն,
և իրենց մարմիններուն վրայ կըտ-
րածներ պիտի չընեն, ու անոնց
համար իրենց մազերը պիտի չը-
7 փետտեն ։ Եւ մեռելի մը վրայով
մխիթարութիւն տալու համար՝
սուգի հաց պիտի չբաժնեն, ու
անոնց հայրերուն ու մայրերուն
համար՝ մխիթարութեան բաժա-
8 կը անոնց պիտի չխմցընեն ։ Նաև
կոչունքի տուն մի՛ մտներ, որ ա-
նոնց հետը նստիս ուտելու ու խմե-
9 լու համար ։ Վասն զի զօրաց Տէրը՝
Իսրայէլին Աստուածը այսպէս կ'ը-
սէ ։ Ահա ես աս տեղէն՝ ձեր աչ-
քին առջևէն ու ձեր օրերուն մէջը՝
ցնծութեան ձայնը և ուրախու-
թեան ձայնը, փեսային ձայնը,
ու հարսին ձայնը պիտի դադրեցը-
10 նեմ ։ Ու երբոր աս բոլոր խօսքերը
աս ժողովուրդին զրուցես, և ա-
նոնք քեզի ըսեն ։ Ինչո՞ւ համար
Տէրը բոլոր աս մեծ չարիքը մեր
վրայ խօսեցաւ, ու ի՞նչ է մեր ան-
օրէնութիւնը ու մեր մեղքը որ մեր
Տէր Աստուծոյն դէմ գործեր ենք,
11 Ան ատենը անոնց ըսես ։ Վասն զի
ձեր հայրերը զիս թողուցին, կ'ըսէ
Տէրը, և ուրիշ աստուածներու
ետևէ գացին, ու անոնց ծառայու-
թիւն ըրին, և անոնց երկրպագու-
թիւն ըրին ։ զիս թողուցին, ու իմ
12 օրէնքս չպահեցին ։ Եւ դուք ձեր
հայրերէն աւելի չարութիւն ըրիք ։
և ահա ինծի մտիկ չընելով, ձեզ-
մէ ամէն մէկը իր չար սրտին կամա-
13 կորութեանը ետևէն գնաց ։ Ես
ալ աս երկրիս երեսէն ձեզ պիտի
նետեմ անանկ երկիր մը՝ որ չէք

Ն. Ք. Դ. Ք. ԻՐ 601

Գլ. ԺԵ. 2։
Գլ. ԻԲ. 18, 19։ ԻԵ. 33։
Սաղ. ՁԴ. 10։ Գլ. Ը. 2։ Թ. 22։
Սաղ. ՀԹ. 2։ Գլ. Է. 33։ ԼԴ. 20։
Եզեկ. ԻԴ. 17, 22, 23։
Գլ. ԻԲ. 18։
Ղև. ԺԹ. 28։ Բ Օր. ԺԴ. 1։ Գլ. ԽԱ. 5։ ԽԷ. 5։
Ես. ԻԲ. 12։ Գլ. Է. 29։
Բ Ովս. Թ. 4։ Տես Բ Օր. ԻԶ. 14։ Յոբ. ԽԲ. 11։
Առակ. ԼԱ. 6, 7։
Ես. ԻԴ. 7, 8։ Գլ. Է. 34։ ԻԵ. 10։ Եզեկ. ԻԶ. 13։ Ովս. Բ. 11։ Յայտ. ԺԸ. 23։
Բ Օր. ԻԹ. 24։ Գլ. Ե. 19։ ԺԳ. 22։ ԻԲ. 8։
Բ Օր. ԻԹ. 25։ Գլ. ԻԲ. 9։
Գլ. Է. 26։
Գլ. ԺԳ. 10։
Բ Օր. Դ. 26, 27, 28։ ԻԲ. 36, 63, 64, 65։
Գլ. ԺԵ. 14։

ճանչնար ո՛չ դուք՝ ո՛չ ալ ձեր հայ-
րերը . ու հոն ցորեկ ու գիշեր օտար
աստուածներու ծառայութիւն
պիտի ընէք . ինչու որ ձեզի ողոր-
մութիւն պիտի չընեմ ։
14 Անոր համար ահա՛ օրեր կու
գան՝ կ'ըսէ Տէրը , որ ալ պիտի չը-
սուի թէ՝ կենդանի է Տէրը՝ որ Իս-
րայէլի որդիքը Եգիպտոսի երկրէն
15 հանեց . Հապա՝ կենդանի է Տէրը՝
որ Իսրայէլի որդիքը հանեց հիւսիսի
երկրէն , և ան բոլոր երկիրներէն՝
ուր որ զանոնք քշեր էր . ու զա-
նոնք պիտի դարձընեմ իրենց երկի-
րը՝ որն որ իրենց հայրերուն տուի ։
16 Ահա՛ ես շատ ձկնորսներ բերել
պիտի տամ՝ կ'ըսէ Տէրը , ու զա-
նոնք պիտի որսան . և անկէ ետքը
շատ որսորդներ բերել պիտի տամ ,
ու զանոնք ամէն լեռան վրայէն , և
ամէն բլուրի վրայէն , ու վէմերուն
17 ծակերէն պիտի որսան ։ Վասն զի
իմ աչքերս անոնց ամէն ճամբա-
ներուն վրայ է . իմ երեսէս ծած-
կուած չեն . ու անոնց անօրէնու-
թիւնը իմ աչքերուս առջեւէն պա-
18 հուած չէ ։ Եւ նախ անոնց անօրէ-
նութեանը ու մեղքին կրկնապա-
տիկ հատուցում պիտի ընեմ , ո-
րովհետև իմ երկիրս պղծեցին , և
իրենց գարշութիւններուն ու պղղ-
ծութիւններուն դիերովը իմ ժա-
ռանգութիւնս լեցուցին ։
19 Ո՛վ Տէր՝ իմ զօրութիւնս և իմ
բերդս , ու նեղութեան օրը իմ
ապաստանարանս , երկրին ծայրերէն
ազգերը քեզի պիտի գան , ու պիտի
ըսեն . Իրաւցընէ մեր հայրերը՝ սը-
տութիւն , ունայնութիւն ու
անօգուտ բաներ ժառանգեցին ։
20 Մի՞թէ մարդ իրեն աստուածնե՞ր
պիտի ընէ . ու անոնք աստուածներ
21 չեն ։ Անոր համար ահա ես անոնց
աս անգամ պիտի գիտցընեմ . իմ
ձեռքս ու իմ զօրութիւնս պիտի
գիտցընեմ անոնց . և պիտի գիտ-
նան որ իմ անունս Եհովայ է ։

## ԳԼ. ԺԷ

1 Յուդային գերութիւնը իր մեղքին համար ։ 5 Մարդու ապաւինիլը կ'անիծուի . 7 իսկ Աստուծոյ ապաւինիլը կ'օրհնուի ։ 9 Խաբեբայ սիրտը չկրնար զԱստուած խաբել ։ 12 Աստուծոյ փրկութիւնը ։ 15 Մարգարէն գանգատ կ'ընէ իր մարգարէութիւնը ծաղր ընողներուն համար . 19 ու կը խրկուի որ շաբաթը սուրբ պահելուն ուխտը նորոգէ ։

1 Յուդային մեղքը երկաթի գրի-
չով , ու անդամանդի ծայրով
գրուած է . անոնց սրտին տախ-
տակին վրայ , և անոնց սեղաննե-
րուն եղջիւրներուն վրայ փորուած
2 է . Որպէս զի անոնց տղաքը միտ-
քերնին բերեն անոնց սեղանները ու
անոնց Աստարովթի կուռքերը , որ
դալար կանանչ ծառերուն քովը բարձր
բլուրներուն վրայ շինուած էին ։
3 Ո՛վ իմ լեռս՝ որ դաշտի մէջ ես ,
քու ստացուածքդ , քու բոլոր
գանձերդ , ու բոլոր սահմաններուդ
մէջը մեղքի համար շինուած բարձր
տեղերդ յափշտակութեան պիտի
4 մատնեմ ։ Եւ դուն ալ պիտի
զրկուիս քու ժառանգութենէդ՝ որ
քեզի տուի . և քու չգիտցած երկ-
րիդ մէջը քու թշնամիներուդ ծա-
ռայ պիտի ընեմ քեզ . վասն զի
իմ բարկութեանս մէջ կրակ վա-
ռեցիք , որ յաւիտեան պիտի բոր-
բոքի ։
5 Տէրը այսպէս կ'ըսէ . Անիծեա՜լ
ըլլայ ան մարդը՝ որ մարդու կ'ա-
պաւինի , ու մարմինը իրեն բա-
զուկ կ'ընէ , և իր սիրտը Տէրոջմէ
6 կը խոտորի ։ Անիկայ անապատի
մէջ թափառողի պէս պիտի ըլլայ .
ու երբոր աղէկութիւն գայ , պի-
տի չտեսնէ . և անապատին այրուած
տեղուանքը՝ աղի ու անբնակ երկրի
7 մէջ պիտի բնակի ։ Օրհնեա՜լ ըլ-
լայ ան մարդը՝ որ Տէրոջը կ'ապա-
8 ւինի , ու անոր յոյսը Տէրն է ։ Ա-
նիկայ ջուրերու քով տնկուած
ծառի պէս պիտի ըլլայ , որ իր ար-
մատները գետի քով երկընցընելով՝
տաքութեան գալը չտեսներ . հա-
պա անոր տերևը կանանչ կ'ըլլայ ,
ու երաշտութեան տարին նեղու-
թիւն չքաշեր , ու պտուղ տալէն
ետ չմնար ։
9 Սիրտը ամէն բանէն աւելի խա-
բեբայ ու խիստ չար է . զանիկայ
10 ո՞վ կրնայ գիտնալ ։ Ես Տէրս
սիրտը կը քննեմ , երիկամունքնե-
րը կը փորձեմ , որ մարդուն իր
ճամբաներուն համեմատ , ու իր
գործքերուն պտուղին համեմատ
հատուցում ընեմ ։
11 Անիրաւութեամբ հարստութիւն
դիզողը՝ իր չածած հաւկիթները թու-
խսի նստող կաքաւի պէս է .
զանիկայ իր օրերուն կէսին պիտի
թողու , ու վերջը յիմար պիտի
ըլլայ ։
12 Մեր սրբարանին տեղը՝ 'ի սկզբա-
նէ փառաւոր ու բարձր աթոռ է ։
13 Ո՛վ Տէր՝ Իսրայէլին յոյսը , ա-
մէն անոնք որ քեզ կը թողուն՝ պի-
տի ամչնան . ու քեզմէ հեռացողները՝
երկրի հողին վրայ պիտի գրուին .
վասն զի Տէրը՝ կենաց ջուրին աղ-
բիւրը թողուցին ։
14 Ո՛վ Տէր՝ զիս բժշկէ , ու պիտի
բժշկուիմ . զիս փրկէ , ու պիտի
փրկուիմ . վասն զի իմ պարծանքս
15 դուն ես ։ Ահա անոնք ինծի կ'ը-
սեն . Տէրոջը խօսքը ո՞ւր է . հիմա

Ն. Ք. ԶՔ. Իրր 601

ա Գլ. ա. 4, 5։ 
բ Գլ. ժզ. 19։ 
գ Սաղ. լճ. 4, խ. 14, Հ. 2։ 
դ Սաղ. ին. 2։ 
ե Գլ. ժա. 20։ 
զ Գլ. ժԹ. 3, Իբ. 2։ 
է Թուոց. ժե. 32, 35, Նեեմ. ժգ. 19։ 
ը Ել. ի. 8, իգ. 12, լա. 13, Եզեկ. ի. 12։ 
թ Գլ. է. 24, 26, ժա. 10։ 
ժ Գլ. իբ. 4։ 
ի Գլ. լբ. 44, լգ. 13։ 
լ Զաք. է. 7։ 
խ Սաղ. ճէ. 22, ճժզ. 17։ 
ծ Գլ. ին. 14, խԹ. 27, Ողբ. դ. 11, Ամով. ա. 4, 7, 10, 12, բ. 2, 5։ 
կ դ Թագ. իե. 9, Գլ. ծբ. 13։

16 Թող գայ ։ Բայց ես ^ա քու ետեւէդ՝
հովիւ ըլլալէն չփախայ, ու չարիքի
օրուան չցանկացայ ։ ^բ Դուն
գիտես. իմ շրթունքներէս ելածը
17 քու առջեւդ էր ։ Ինծի արհաւիրք
մի՛ ըլլար. ^գ նեղութեան օրը իմ ա-
18 պաւէնս դուն ես ։ ^դ Զիս հալա-
ծողները թող ամչնան, ու Ես
չամչնամ. թող անոնք զարհու-
րին, ու ես չզարհուրիմ. անոնց
վրայ թշուառութեան օրը բե՛ր, և
^ե զանոնք կրկին կոտորածով կոտ-
րէ ։
19 Տէրը այսպէս ըսաւ ինծի. Գնա՛,
ու ժողովուրդին որդւոցը դուռը՝
ուսկից որ Յուդայի թագաւորները
կը մտնեն ու կ'ելլեն, ու Երուսա-
20 ղէմին ամէն դռները կայնէ՛. Եւ
անոնց ըսէ՛. ^զ Ո՛վ Յուդայի թա-
գաւորներ, ու բոլոր Յուդա, ու
Երուսաղէմի բոլոր բնակիչներ՝ որ
աս դռներէն կը մտնէք, Տէրոջը
21 խօսքը մտիկ ըրէք. Տէրը այսպէս
կ'ըսէ. ^է Ձեր անձերուն զգուշու-
թիւն ըրէք. և շաբաթ օրը բեռ
մի՛ վերցընէք, ու Երուսաղէմի
22 դռներէն ներս մի՛ բերէք. Եւ շա-
բաթ օրը ձեր տուներէն դուրս բեռ
մի՛ հանէք, ու բնաւ գործ մը չը-
նէք, հապա շաբաթ օրը սուրբ
պահեցէք, ինչպէս որ ^ը ձեր հայրե-
23 րուն պատուիրեցի. ^թ Բայց անոնք
մտիկ չըրին, ու ականջնին չծռե-
ցին, հապա իրենց պարանոցը խըս-
տացուցին որ մտիկ չընեն, ու խրատ
24 չընդունին ։ Իսկ թէ որ ուշադրու-
թեամբ ինծի մտիկ ընէք, կ'ըսէ
Տէրը, որ շաբաթ օրը աս քաղաքին
դռներէն ներս բեռ չբերէք, ու
շաբաթ օրը սուրբ պահէք, բնաւ
25 անոր մէջ գործ մը չընելով, ^ժ Ան
ատենը Դաւիթի աթոռին վրայ
նստող թագաւորներ ու իշխաններ՝
կառքերու ու ձիերու վրայ հեծած՝
աս քաղաքին դռներէն պիտի մըտ-
նեն, իրենք և իրենց իշխանները՝
Յուդայի մարդիկները, ու Երուսա-
ղէմի բնակիչները. ու աս քաղաքը
26 յաւիտեան պիտի մնայ ։ Եւ Յու-
դայի քաղաքներէն ու ^ի Երուսաղէ-
մի շրջակայ տեղերէն, ու Բենիա-
մինի երկրէն, և ^լ դաշտերէն, ու
լեռներէն, ու հարաւէն պիտի գան,
և ողջակէզ, ու զոհ, և հացի ըն-
ծայ, ու կնդրուկ պիտի բերեն, և
Տէրոջը տունը ^խ շնորհակալութեան
27 ընծաներ պիտի բերեն ։ Բայց թէ
որ ինծի մտիկ չընէք, որ շաբաթ
օրը սուրբ պահէք, ու շաբաթ օրը
բեռ չվերցընէք, ու Երուսաղէմի
դռներէն ներս չմտնէք, ^ծ Ես ալ ա-
նոր դռներուն մէջ կրակ պիտի
բռնկցընեմ. ^կ ու Երուսաղէմին
պալատները պիտի ուտէ, ու պիտի
չմարի ։

Ն. Ք. ԶՔ. Իրր 601

Իրր 605

ա Եսա. խե. 9, Հռով. Թ. 20, 21։ 
բ Եսա. կդ. 8։ 
գ Գլ. ա. 10։ 
դ Եզեկ. ժը. 21, լգ. 11։ 
ե Գլ. իզ. 3, Յովն. դ. 10։ 
զ դ Թագ. ժէ. 13, Գլ. է. 3, իե. 5, իզ. 13, լե. 15։ 
է Գլ. բ. 25։ 
ը Գլ. բ. 10, Տես ա Կոր. ե. 1։ 
թ Գլ. ե. 30։ 
* Կամ՝ Սուրբ սարայէն

ԳԼ. ԺԸ

1 Բրուտի մը օրինակով՝ մարգարէն կը ցուցնէ Աստուծոյ բացարձակ իշխանութիւնը ազգերը կառավարելու մէջ ։ 11 Յուդային՝ դատաստաններու սպառնալիք կ'ըլլայ՝ իր տարօրինակ ապստամբութեանը համար ։ 18 Երեմիա իրեն դաւաճանութիւն ընողներուն դէմ կ'աղօթէ ։

1 Տէրոջը կողմանէ Երեմիային եղած
2 խօսքն է, որ ըսաւ. Ելի՛ր, ու
բրուտին տունը իջի՛ր. և հոն քե-
3 զի իմ խօսքերս լսել տամ ։ Ու ես
բրուտին տունը իջայ. և ահա անի-
4 կայ ճախարակով կը գործէր ։ Ու
կաւէ շինած ամանը՝ բրուտին ձեռ-
քին մէջը աւրուեցաւ. և զանիկայ
նորէն ուրիշ աման մը շինեց՝ ինչ-
պէս որ բրուտին հաճոյ եղաւ, որ ը-
5 նէ ։ Եւ Տէրոջը խօսքը ինծի եղաւ՝
6 ըսելով. Միթէ ձեզի՝ ^ա աս բրուտին
ըրածին պէս ընելու կարող չե՞մ՝
ո՛վ Իսրայէլի տունը, կ'ըսէ Տէրը.
ահա ^բ ինչպէս է կաւը բրուտին
ձեռքին մէջ՝ դուք իմ ձեռքիս
մէջը այնպէս էք, ո՛վ Իսրայէլի
7 տունը ։ Երբոր մէկ ազգի մը, կամ
թագաւորութեան մը համար ըսե-
լու ըլլամ, թէ ^գ պիտի քակեմ,
պիտի փլցընեմ ու պիտի կորսըն-
8 ցընեմ, ^դ Թէ որ ան ազգը՝ որուն
վրայով խօսեցայ, իր չարութենէն
դառնայ, ^ե ես ալ պիտի զղջամ ան
չարիքին համար՝ որ անոր ընելու
9 մտածեր էի ։ Իսկ երբոր մէկ ազգի
մը, կամ թագաւորութեան մը
համար ըսելու ըլլամ, թէ պիտի
10 շինեմ, ու պիտի տնկեմ, Թէ որ
անիկայ իմ խօսքս մտիկ չընելով՝
իմ առջեւս չարութիւն ընէ, ես ալ
պիտի զղջամ ան բարիքին համար՝
որ ըսեր էի՛ թէ անոր պիտի ընեմ ։
11 Եւ հիմա Յուդայի մարդիկնե-
րուն՝ ու Երուսաղէմի բնակիչնե-
րուն խօսէ՛ ու ըսէ՛. Տէրը այսպէս
կ'ըսէ. Ահա ես ձեզի համար չարիք
կը պատրաստեմ, ու ձեզի համար
խորհուրդ մը կը խորհիմ. ^զ Հիմա
ամէն մէկերնիդ ձեր չար ճամբանե-
րէն դարձէ՛ք, և ձեր ճամբաները
12 ու ձեր գործքերը ուղղեցէ՛ք ։ Բայց
անոնք կ'ըսեն. ^է Յոյս չկայ. վասն
զի մենք մեր խորհուրդներուն ետե-
ւէն պիտի երթանք, ու ամէն մէ-
կերնիս՝ մեր չար սրտին կամակո-
րութեանը դէմ պիտի ընենք ։
13 Անոր համար Տէրը այսպէս կ'ը-
սէ. ^ը Հիմա ազգերուն մէջ հարցու-
ցէ՛ք. ասանկ բան մը ո՞վ լսեր է ։
Իսրայէլին կոյսը ^թ խիստ սոսկալի
14 բան ըրաւ ։ Միթէ Լիբանանի ձիւ-
նը՝ *արտին վէմէն՝ կը պակսի՞,

Ն. Ք. ԴՔ. իբր 605

ժ Գլ. բ. 13. 32. գ. 21. ժգ. 25. ժէ. 13.
է Գլ. ժ. 15. ժզ. 19.
ւ Գլ. զ. 16.
ի Գլ. ժթ. 8. խթ. 13. ծ. 13.
ծ Գ Թագ. թ. 8. Ողբ. բ. 15. Միք. զ. 16.
կ Գլ. ժդ. 24.
հ Սաղ. խը. 7.
ձ Տես Ղւ. բ. 27.
ղ Գլ. ժա. 19.
ճ Ղև. ժ. 11. Մաղ. բ. 7. Յով. է. 48. 49.
մ Սաղ. ճթ. 4. 5.
յ Սաղ. լե. 7. ծէ. 6. Հմր 22.
ն Սաղ. ճթ. 9. 10.
շ Հմլ 20.
ո Սաղ. լե. 4. ճթ. 14. Գլ. ժա. 20. ժե. 15.

կամ հեռուէն վազող ցուրտ ջու-
15 րերը կը ցամքի՞ն ։ Բայց իմ ժողո-
վուրդս զիս մոռցաւ . ունայնու-
թիւններու խունկ ծխեցին . ու
զանոնք իրենց քալած հին ճամ-
բաներուն մէջը սահեցուցին , որ
շաւիղներու մէջ՝ չշինուած
16 ճամբայի մէջ քալեն , Որ իրենց
երկիրը աւերակ , ու յաւիտեան
սուլելու ընեն . անկէ ա-
մէն անցնողը պիտի հիանայ , ու
17 գլուխը պիտի շարժէ ։ Զանոնք
թշնամիին առջևը պիտի ցրուեմ
իբր թէ արևելեան հովով . անոնց
թշուառութեան օրը՝ անոնց կռ-
նակ պիտի ցուցնեմ , և ոչ թէ
երես ։
18 Ու ըսին . Եկէ՛ք՝ Երեմիային
դէմ հնարքներ խորհինք . վասն զի
քահանայէն՝ օրէնք , ու իմաստու-
նէն՝ խորհուրդ , և մարգարէէն
խօսք պիտի չկորսուի . եկէ՛ք՝ զա-
նիկայ լեզուով զարնենք , ու անոր
ամէն խօսքերուն ականջ չտանք ։
19 Ո՛վ Տէր՝ ինծի ականջ տուր , ու
ինծի հետ վէճ ընողներուն ձայնը
20 լսէ ։ Միթէ աղէկութեան փո-
խարէն՝ չարիք կը հատուցուի՞ ։
Վասն զի անոնք իմ անձիս համար
փոս փորեցին . յիշէ՛ որ քու առ-
ջևդ կայնեցայ , որ անոնց համար
բարեխօսութիւն ընեմ , ու քու
բարկութիւնդ անոնցմէ դարձնեմ ։
21 Անոր համար անոնց տղաքները
սովի՛ մատնէ , ու զանոնք սուրին
ձեռքը յանձնէ . անոնց կնիկները
անզաւակ , ու որբևարի ըլլան , և
էրիկները մահուամբ կոտրուին ,
երիտասարդները պատերազմի մէջ
22 սրով զարնուին ։ Երբոր անոնց
վրայ յանկարծակի [illegible]
գունդեր բերես , անոնց տուներէն
աղաղակ լսուի . ինչու որ զիս
բռնելու համար փոս փորեցին , և
իմ ոտքերուս համար ծածուկ որո-
23 գայթներ լարեցին ։ Ու դուն ո՛վ
Տէր՝ գիտես անոնց բոլոր խորհուր-
դը ինծի դէմ՝ մեռցնելու հա-
մար . անոնց անօրէնութիւնը մի՛
քաւեր , և անոնց մեղքը քու առ-
ջևէդ մի՛ ջնջեր . հապա անոնք քու
առջևդ կործանին . քու բարկու-
թեանդ ատենը անոնց [illegible]
ըրէ ։

## ԳԼ. ԺԹ

1—15 Բրուտի ամանի մը կոտրուելուն օրինակովը կը ցուցուի Հրէից կործանումը իրենց մեղքերուն համար ։

1 Տէրը այսպէս ըսաւ . Գնա՛ , բրու-
տի շինած հողէ կուժ մը ծախու
առ , ու ժողովուրդին ծերերէն
և քահանաներուն ծերերէն հե՛տդ
2 առ . Եւ Խեցիներու դրանը դիմա-
ցը եղող՝ Ենովմի որդւոյն ձորը
ելիր , ու հոն քարոզէ՛ ան խօսքերը
3 որ քեզի պիտի զրուցեմ . Ու ըսէ .
Ո՛վ Յուդայի թագաւորներ , ու
Երուսաղէմի բնակիչներ՝ Տէրոջը
խօսքը մտիկ ըրէք . Զօրաց Տէրը՝
Իսրայէլին Աստուածը այսպէս կ՚ը-
սէ . Ահա՛ ես աս տեղւոյս վրայ ա-
նանկ չարիք պիտի բերեմ , որ զա-
նիկայ ամէն լսողին ականջները
4 պիտի խօսին . Վասն զի անոնք
զիս թողուցին , ու աս տեղս ինծմէ
օտարացուցին , և հոս խունկ ծը-
խեցին ուրիշ աստուածներու՝ որ
ոչ իրենք , և ոչ իրենց հայրերը ,
ոչ ալ Յուդայի թագաւորները
ճանչցեր էին . ու աս տեղս ան-
5 մեղ արիւնով լեցուցին . Եւ Բա-
ղաղին բարձր տեղուանքը շինեցին ,
որ իրենց տղաքները կրակով այրեն՝
Բաղաղին ողջակէզ ընեն , որն որ
ես չհրամայեցի , չխօսեցայ , ու
6 միտքէս ալ չանցաւ ։ Ուստի ահա՛
օրեր կու գան՝ կ՚ըսէ Տէրը , որ
մէյմըն ալ աս տեղս՝ Տօփեթ ու
Ենովմի որդւոյն ձորը՝ պիտի չը-
սուի , հապա՝ Սպանութեան ձոր ։
7 Եւ աս տեղս Յուդային ու Երու-
սաղէմին խորհուրդը պիտի խափա-
նեմ . Ու զանոնք՝ իրենց թշնամի-
ներուն առջևը սրով , և իրենց հո-
գին փնտռողներուն ձեռքովը պիտի
կործանեմ . ու անոնց դիերը՝
երկինքի թռչուններուն , ու երկրի
գազաններուն կերակուր պիտի
8 տամ . Եւ աս քաղաքը՝ աւերակ
ու նախատինք պիտի ընեմ . անկէ
ամէն անցնողը՝ անոր բոլոր հա-
րուածներուն պատճառաւը՝ պիտի
9 հիանայ ու պիտի սուլէ ։ Եւ պա-
շարման ատենը՝ ան նեղութեանը
մէջ՝ որով անոնց թշնամիները և
անոնց հոգին փնտռողները՝ զանոնք
պիտի նեղեն , իրենց տղոցը միսը
ու իրենց աղջիկներուն միսը պիտի
կերցընեմ անոնց . ու իրարու միսը
պիտի ուտեն ։
10 Ետքը ան կուժը՝ քեզի հետ
եկող մարդիկներուն աչքին առջևը
11 կոտրէ՛ . Ու անոնց ըսէ . Զօրաց Տէ-
րը այսպէս կ՚ըսէ . Աս ժողովուր-
դը ու աս քաղաքը այնպէս պիտի
կոտրեմ , ինչպէս որ մէկը բրուտի
ամանը կը կոտրէ , որ ալ չկրնար
նորոգուիլ . ու զանոնք Տօփեթի
մէջ պիտի թաղեն՝ *մինչև որ ալ
12 թաղելու տեղ չմնայ" ։ Աս տե-
ղւոյս ու անոր բնակչացը այսպէս
պիտի ընեմ՝ կ՚ըսէ Տէրը . և աս
քաղաքը Տօփեթի պէս պիտի ը-
13 նեմ . Ու Երուսաղէմի տուները , և
Յուդայի թագաւորներուն տունե-

Ն. Ք. ԴՔ. իբր 605

ա Տես. ժե. 8. Դ Թագ. իգ. 10. Գլ. է. 31.
բ Գլ. ժէ. 20.
գ Ա Թագ. գ. 11. Դ Թագ. իա. 12.
դ Բ Օր. իբ. 20. Ես. կե. 11. Գլ. բ. 13. 17. 19. ժե. 6. ժէ. 13.
ե Դ Թագ. իա. 16. Գլ. բ. 34.
զ Գլ. է. 31. 32. լբ. 35.
է Ղև. ժը. 21.
ը Տես. ժե. 8.
թ Ղև. իզ. 17. Բ Օր. իը. 25.
ժ Սաղ. հթ. 2. Գլ. է. 33. ժզ. 4. լդ. 20.
ի Գլ. ժը. 16. խթ. 13. ծ. 13.
ւ Ղև. իզ. 29. Բ Օր. իը. 53. Ես. թ. 20. Ողբ. դ. 10.
ի Գլ. ծա. 63. 64.
ծ Սաղ. բ. 9. Ես. լ. 14. Ողբ. դ. 2.
կ Գլ. է. 32.
* Կամ՝ ուրիշ թաղելու տեղ չըլլալուն համար ։

Ն. Ք. ԶՔ.
ԽԲԲ 605

ՀԴ Թագ. ԻԴ. 10։
* Կամ՝ այսինքն ան բոլոր տուները՝
Յ Դ Թագ. ԻԳ. 12։ Գլ. ԼԲ. 29։ Սոփ. Ա. 5։
ՂԳլ. Է. 18։
Ե Տես բՄն. Ի. 5։
Ր Գլ. Է. 26։ ԺԵ. 23։

րը՝ Տօփեթի տեղին պէս պիղծ
պիտի ըլլան, *ան բոլոր տուներուն
պատճառովը" որոնց Յտանիքներուն վրայ երկինքի բոլոր զօրքերուն խունկ ծխեցին, և օտար աստուածներուն ՂԹափելու նուէրներ մատուցին։
14 Ու Երեմիա Տօփեթէն եկաւ,
ուր որ Տէրը զանիկայ խրկեր էր
մարգարէութիւն ընելու համար.
և ԵՏէրոջը տանը գաւիթը կայնեցաւ, ու բոլոր ժողովուրդին ըսաւ.
15 Զօրաց Տէրը՝ Իսրայէլին Աստուածը այսպէս կ'ըսէ. Ահա ես քաղաքիս վրայ, ու անոր բոլոր գիւղաքաղաքներուն վրայ պիտի բերեմ
ան բոլոր չարիքները՝ որ անոր դէմ
խօսեցայ. վասն զի Րիրենց պարանոցը խստացուցին, որ իմ խօսքերս
մտիկ չընեն։

ԳԼ. Ի

1 Փասուր՝ Երեմիային կը զարնէ և նոր անուն մը կ'ընդունի, ու սոսկալի դատապարտութիւն մը։ 7 Երեմիա կը գանգատի իր անարգուելուն համար, 10 իրեն դէմ եղած նենգութեանը համար, 14 և իր ծննդեանը համար։

Աա Մն. Իդ. 14։
Բ Կամ՝ կոճղ
‡ Եբ՝ ամէն կողմանէ վախ. Սաղ. Լա. 13։ Հմր 10։ Գլ. Զ. 25։ Խղ. 5։ ԽԹ. 29։
Բ Դ Թագ. Ի. 17։ Իդ. 12—16։ ԻԵ. 13, ԾԵ։ Գլ. Գ. 24։

1 Ու Տէրոջը տանը գլխաւոր վերակացուն Եմմէրի որդին Փասուր
քահանան լսեց աս խօսքերը՝ որ
2 Երեմիա կը մարգարէանար։ Ու
Փասուր՝ Երեմիա մարգարէին զարկաւ, և զանիկայ՝ Տէրոջը տանը
մէջ եղող՝ Բենիամինի վերի դրանը
3 Բկոճղը դրաւ։ Ու հետևեալ օրը
Փասուր՝ Երեմիան բանտէն հանեց. ու Երեմիա անոր ըսաւ. Տէրը քու անունդ Փասուր չկոչեց,
4 հապա ‡Մակոր միսաբիբ. Վասն
զի Տէրը այսպէս կ'ըսէ. Ահա ես
քեզ արհաւիրք պիտի ընեմ քու
անձիդ, ու քու բոլոր բարեկամներուդ. և անոնք իրենց թշնամիներուն սրովը պիտի իյնան, ու քու
աչքերդ պիտի տեսնեն. և բոլոր
Յուդան Բաբելոնի թագաւորին
ձեռքը պիտի մատնեմ. ու զանոնք
Բաբելոն գերի պիտի տանի, ու
5 զանոնք սրով պիտի զարնէ։ Եւ
Բաս քաղաքին բոլոր հարստութիւնը, ու անոր բոլոր վաստակը,
ու անոր բոլոր պատուական բաները պիտի տամ. և Յուդայի թագաւորներուն բոլոր գանձերը իրենց թշնամիներուն ձեռքը պիտի
տամ. և զանոնք պիտի յափշտակեն ու առնեն, և Բաբելոն տա-
6 նին։ Եւ դուն ով Փասուր՝ ու
քու տանդ բոլոր բնակիչները՝ գերութեան պիտի երթաք. և Բաբելոն պիտի երթաս, ու հոն պիտի
մեռնիս, և հոն պիտի թաղուիս՝
թէ՛ դուն և թէ քու բոլոր բարե-
կամներդ, որոնց Գսուտ մարգարէութիւն ըրիր։
7 Զիս համոզեցիր ով Տէր, ու
ես համոզուեցայ. Դդուն ինծմէ
զօրաւոր ես, ու յաղթեցիր. Եամէն օր խաղք եղայ. ամէնը զիս
8 ծաղր կ'ընեն. Քանզի քանի որ կը
խօսիմ՝ կ'աղաղակեմ, Եզրկանաց ու զրկանաց համար կը բողոքեմ. վասն զի Տէրոջը խօսքը
ամէն օր նախատինք ու անարգանք
9 եղաւ ինծի։ Ու ես ըսի. Զանիկայ չյիշեմ, և մէյմըն ալ անոր
անունովը չխօսիմ. բայց սրտիս
մէջը Եվառած կրակի պէս եղաւ
ոսկորներուս մէջը գոցուած. և
յոգնեցայ զսպելէ կրելէն, ու ճար
10 չեմ կրնար։ Բվասն զի շատերէն
չարախօսութիւն լսեցի. ամէն
կողմանէ վախ կայ։ Բամբասեցէք, ու բամբասենք՝ ըսին. Ժիմ
բոլոր բարեկամներս՝ ‖իմ սխալիլս
կը դիտէին, ըսելով". Գուցէ անիկայ խաբուի, ու անոր յաղթենք,
11 և անկէ մեր վրէժը առնենք։ Բայց
ԷՏէրը ինծի հետ է զօրաւոր ախոյեանի պէս. անոր համար զիս
հալածողները պիտի գլորին, ու
Եպիտի չյաղթեն. անոնք խիստ
պիտի ամչնան, քանզի անխելքութեամբ կը վարուին. անոնց յիշատակ
Բանարգանքը յաւիտեան պիտի
12 չմոռցուի։ Բայց դուն՝ ով զօրաց Տէրը՝ որ Ծարդարը կը փորձես, երիկամունքը, ու սիրտը կը
տեսնես. անոնց վրայ Լքու վրէժխնդրութիւնդ տեսնեմ. քանզի
13 իմ դատս քեզի յայտնեցի։ Տէրոջը երգեցէ՛ք, Տէրը գովեցէ՛ք.
քանզի Գտնանկին հոգին չարագործներուն ձեռքէն ազատեց։
14 ՅԱնիծեա՜լ ըլլայ ան օրը՝ որ ես
ծնայ. իմ մօրս զիս ծնած օրը
15 օրհնեալ չըլլայ։ Անիծեալ ըլլայ ան
մարդը՝ որ իմ հօրս աւետիս բերաւ, ու զանիկայ խիստ շատ ուրախացուց՝ ըսելով. Քեզի արու
16 զաւակ մը ծնաւ։ Եւ ան մարդը
ան քաղաքներուն պէս ըլլայ՝ որոնք Տէրը Ղկործանեց, ու չխնայեց. անիկայ առաւօտուն Եողբ
լսէ, ու կէսօրուան ատենը աղա-
17 ղակ։ Րվասն զի մօրս արգանդէն
զիս չմեռցուց, որ մայրս ինծի
գերեզման ըլլար. և անոր արգան-
18 դը յաւիտեան յղի մնար։ Ժինչո՞ւ
այսպէս մօրս արգանդէն ելայ, Նոր
աշխատանք ու ցաւ տեսնեմ, և
իմ օրերս ամօթով սպառին։

ԳԼ. ԻԱ

1 Սեդեկիա մարդ կը խրկէ որ Երեմիային հարցրնէ թէ Նաբուգոդոնոսորին պատերազմը ինչ վախճան պիտի ունենայ։ 3 Երեմիա կը

Ն. Ք. ԶՔ.
ԽԲԲ 605

Գ Գլ. ԺԴ. 13. 14։ ԻԸ. 15։ ԻԹ. 21։
Դ Գլ. Ա. 6. 7։
Ե Ողբ. Գ. 14։
ՂԳլ. Զ. 7։
Է Յոբ. ԼԲ. 18. 19։ Սաղ. ԼԹ. 3։
Ը Յոբ. ԼԲ. 18։ Գոր. ԺԲ. 5։
Բ Սաղ. Լա. 13։
Ժ Յոբ. ԺԹ. 19։ Սաղ. ԽԱ. 9։ ԾԵ. 13. 14։ Ղու. ԺԱ. 53. 54։
‖ Կամ՝ ինծի յարողները կ'ըսեն.
Է Գլ. Ա. 8. 19։
Ղ Գլ. ԺԵ. 20։ ԺԷ. 18։
Ե Գլ. ԻԳ. 40։
Ծ Գլ. ԺԱ. 20։ ԺԷ. 10։
Լ Սաղ. ԾԴ. 7։ ԾԹ. 10։
Գ Սաղ. ԼԵ. 9. 10։ ՃԹ. 30. 31։
Յ Յոբ. Գ. 3։ Տես Գլ. ԺԵ. 10։
Ղ Ծն. ԺԹ. 25։
Ե Գլ. ԺԸ. 22։
Ր Յոբ. Գ. 10. 11։
Ժ Յոբ. Գ. 20։
Ն Ողբ. Գ. 1։

Ն. Ք. ՂՔ. Իրր 589

նախաձայնէ մեկ սաստիկ պաշարում մը, ու վշտալի գերութիւն մը. 8 կը խրատէ ժողովուրդը որ Քաղդէացւոց իյնան, 11 ու Թագաւորին տունը կը մեղադրէ։

1 Տէրոջը կողմանէ Երեմիային եղած
խօսքն է, երբոր Սեդեկիա Թա-
գաւորը՝ Մելքիայի որդին [ա]Փա-
սուրը, ու Մաասիայի որդին [բ]Սո-
փոնիա քահանան անոր խրկեց,
2 ըսելով. [գ]Հնորհք ըրէ՝ մեզի հա-
մար Տէրոջը հարցուր. վասն զի
Բաբելոնի Նաբուգոդոնոսոր Թա-
գաւորը մեզի հետ պատերազմ կ'ը-
նէ. գուցէ Տէրը մեզի համար իր
բոլոր սքանչելիքներուն համեմատ
ընէ. և անիկայ *մեզմէ դառնայ»։
3 Ու Երեմիա անոնց ըսաւ. Սե-
4 դեկիային այսպէս ըսէք. Իսրայէլին
Տէր Աստուածը այսպէս կ'ըսէ. Ա-
հա ես ձեր ձեռքերուն մէջը եղող
պատերազմական զէնքերը պիտի
դարձընեմ, որոնցմով դուք՝ պա-
րըսպին դուրսէն ձեզ պաշարող
Բաբելոնի Թագաւորին, ու Քաղ-
դէացիներուն հետ կը պատերազ-
միք. և [դ]զանոնք աս քաղաքիս մէ-
5 ջը պիտի ժողվեմ։ Ու ես ալ [ե]եր-
կընցած ձեռքով, և զօրաւոր բա-
զուկով, սրտմտութեամբ, բար-
կութեամբ ու մեծ ցասումով ձեզի
6 հետ պիտի պատերազմիմ։ Եւ աս
քաղաքիս բնակիչները՝ թէ՛ մարդ
և թէ անասուն պիտի զարնեմ. ա-
նոնք մեծ ժանտախտով պիտի մեռ-
7 նին։ Ու անկէ ետքը՝ կ'ըսէ Տէրը՝
[զ]Յուդայի Թագաւորը Սեդեկիան,
և անոր ծառաները, ու ժողովուր-
դը, և աս քաղաքիս մէջ՝ ժանտ-
ախտէն, սուրէն ու սովէն մնա-
ցածները՝ Բաբելոնի Նաբուգոդո-
նոսոր Թագաւորին ձեռքը, և անոնց
թշնամիներուն ձեռքը, ու անոնց
հոգիները փնտռողներուն ձեռքը
պիտի մատնեմ. և զանոնք սուրի
բերնէ պիտի անցընէ. [է]անոնց պի-
տի չխնայէ, պիտի չգթայ, ու ո-
ղորմութիւն պիտի չընէ։
8 Եւ աս ժողովուրդին ըսես. Տէ-
րը այսպէս կ'ըսէ. Ահա [ը]ես ձեր
առջևը կը դնեմ կենաց ճամբան,
9 ու մահուան ճամբան. [թ]Աս քաղա-
քիս մէջ կեցողը՝ սրով, սովով ու
ժանտախտով պիտի մեռնի. իսկ
ելլողը՝ ու ձեզ պաշարող Քաղ-
դէացիներուն իյնողը ողջ պիտի
մնայ. ու [ժ]անոր կեանքը իրեն
10 աւարի մը պէս պիտի ըլլայ։ Քանզի
[ի]իմ երեսս աս քաղաքիս վրայ հաս-
տատեցի չարիք ընելու համար, և
ոչ թէ բարիք՝ կ'ըսէ Տէրը. [լ]անի-
կայ՝ Բաբելոնի Թագաւորին ձեռքը
պիտի տրուի, ու [խ]զանիկայ կրա-
կով պիտի այրէ։

ա Գլ. ԼԸ. 1։
բ Դ Թագ. ԻԵ. 18. Գլ. ԻԹ. 25. ԼԵ. 3։
գ Գլ. ԼԷ. 3, 7։
* Եբր. մեր վրայէն ելլէ։
դ Ես. ԺԳ. 4։
ե Եղ. Զ. 6։
զ Գլ. ԼԷ. 17. ԼԹ. 5. ԾԲ. 9։
է Բ Օր. ԻԸ. 50. Բ Մն. ԼԶ. 17։
ը Բ Օր. Լ. 19։
թ Գլ. ԼԸ. 2, 17, 18։
ժ Գլ. ԼԹ. 18. ԽԵ. 5։
ի Ղև. ԺԷ. 10. Գլ. ԽԴ. 11. Ամով. Թ. 4։
լ Գլ. ԼԸ. 3։
խ Գլ. ԼԴ. 2, 22. ԼԷ. 10. ԼԸ. 18, 23. ԾԲ. 13։

Ն. Ք. ՂՔ. Իրր 609

11 Եւ Յուդայի Թագաւորին տանը
12 ըսէ. Տէրոջը խօսքը լսեցէ՛ք՝ Ո՛վ
Դաւիթի տունը, Տէրը այսպէս
կ'ըսէ. [ծ]Առտուանց [կ]իրաւունքով
դատաստան տեսէ՛ք, ու զրկուածը
հարստահարողին ձեռքէն ազատե-
ցէ՛ք. չըլլայ որ ձեր չար գործքե-
րուն համար՝ իմ բարկութիւնս կը-
րակի պէս ելլելով բռնկի, ու
13 մարող մը չըլլայ։ Ահա [հ]ես ձեզի
դէմ եմ, ո՛վ հովիտին՝ դաշտական
վէմին բնակիչները, որ կ'ըսէք թէ՝
[ձ]Մեզի դէմ ո՛վ պիտի իջնէ, կամ
մեր բնակարաններուն մէջը ո՛վ պի-
14 տի մտնէ. Բայց ես ձեզի՝ [ղ]ձեր
գործքերուն պտուղին համեմատ՝
այցելութիւն պիտի ընեմ, կ'ըսէ
Տէրը, ու անոր անտառին մէջը
կրակ պիտի բռնկցընեմ, որ [ճ]ա-
նոր ամէն բոլորտիքը եղածը պիտի
ուտէ։

ծ Սաղ. ՁԱ. 3։
կ Գլ. ԻԲ. 3. Զաք. Է. 9։
հ Եզեկ. ԺԳ. 8։
ձ Գլ. ԽԹ. 4։
ղ Առակ. Ա. 31. Ես. Գ. 10, 11։
ճ Բ Մն. ԼԶ. 19. Գլ. ԾԲ. 13։

## ԳԼ. ԻԲ.

1 Երեմիա խոստմունքներով՝ ու սպառնալիքներով կը յորդորէ ժողովուրդը որ ապաշխարեն. 10 Սեղղումին, 13 Յովակիմին, 24 ու Յեքոնիային վրայ հասնելու դատաստանը։

1 Տէրը այսպէս կ'ըսէ. Յուդայի
Թագաւորին տունը իջիր, ու
2 հոն աս խօսքը խօսէ՛. Ու ըսէ՛.
[ա]Ո՛վ Դաւիթի աթոռին վրայ նըս-
տող Յուդայի Թագաւոր՝ Տէրոջը
խօսքը մտի՛կ ըրէ, թէ՛ դուն և թէ
քու ծառաներդ ու ժողովուրդդ՝ որ
3 աս դռներէն կը մտնէք։ Տէրը
այսպէս կ'ըսէ. [բ]Իրաւունք ու ար-
դարութիւն ըրէ՛ք, ու զրկուածը
հարստահարողին ձեռքէն ազատե-
ցէ՛ք, և օտարականին, որբին ու
որբևայրիին [գ]անիրաւութիւն ու
բռնութիւն մի՛ ընէք, և աս տեղը
4 անմեղ արիւն մի՛ թափէք։ Վասն
զի թէ որ ամէն կերպով աս խօսքը
՚ի գործ դնէք, [դ]ան ատենը Դա-
ւիթի աթոռին վրայ նստող Թա-
գաւորներ կառքերու ու ձիերու
վրայ հեծած՝ աս տանը դռներէն
պիտի մտնեն, իրենք, և իրենց ծա-
5 ռաները ու ժողովուրդը։ Բայց թէ
որ աս խօսքերը մտիկ չընէք, [ե]իմ
անձիս վրայ երդում կ'ընեմ, կ'ը-
սէ Տէրը, որ աս տունը աւերակ
6 պիտի ըլլայ։ Քանզի Յուդայի Թա-
գաւորին տանը վրայով Տէրը այս-
պէս կ'ըսէ. Դուն՝ ինծի Գա-
ղաադու պէս, ու Լիբանանու գա-
գաթին պէս ես, սակայն անշուշտ
քեզ անապատի պէս, ու անբնակ
քաղաքներու պէս պիտի ընեմ։
7 Եւ քու վրադ կործանողներ պիտի
*հանեմ. ամէն մէկը իր զէնքովը
պէտք է որ. ու [զ]քու ընտիր եղևին-
ներդ պիտի կտրեն, [է]և կրակը ձը-
8 գեն։ Ու աս քաղաքէն շատ ազ-

ա Գլ. ԺԷ. 20։
բ Գլ. ԻԱ. 12։
գ Տես հմր 17։
դ Գլ. ԺԷ. 25։
ե Եբր. Զ. 13, 14, 17։
* Եբր. սրբեմ.
զ Ես. ԼԷ. 24։
է Գլ. ԻԱ. 14։

Ն․ Ք․ Գ․ Ք․ իրր 609

դներ պիտի անցնին ․ և իրարու պի-
տի ըսեն ․ [ը]Ինչո՞ւ համար Տէրը աս
9 մեծ քաղաքին այսպէս ըրաւ ։ Եւ
պիտի ըսեն ․ [թ]Վասն զի իրենց Տէր
Աստուծոյն ուխտը թողուցին , և
ուրիշ աստուածներու երկրպագու-
թիւն ըրին , ու անոնց ծառայե-
ցին ։
10 [ժ]Մեռնողին համար մի՛ լաք , ու
անոր համար մի՛ ողբաք ․ հա-
[ի]գացողին համար դառնապէս լա-
ցէ՛ք , որովհետև մէյմըն ալ պիտի
չդառնայ , ու իր հայրենիքը պիտի
11 չտեսնէ ։ Վասն զի Տէրը այսպէս
կ'ըսէ Յուդայի թագաւորին Յով-
սիայի որդւոյն [լ]Սեղղումին համար ,
որ իր հօրը Յովսիային տեղը թա-
գաւոր նստաւ , [խ]Ու աս տեղէս ե-
լաւ ․ Անիկայ մէյմըն ալ հոս պիտի
12 չդառնայ ․ Հապա անիկայ իր գե-
րի քշուած տեղը պիտի մեռնի ․ ու
մէյմըն ալ աս երկիրը պիտի չը-
տեսնէ ։
13 [ծ]Վա՜յ անոր՝ որ իր տունը զրկան-
քով , ու իր վերնատուները անի-
րաւութեամբ կը շինէ ․ [կ]Իր դրացին
ձրի կը բանեցնէ , և անոր աշխա-
14 տութեանը վարձքը չվճարեր ․ Ին-
ծի ընդարձակ տուն , ու հովասուն
վերնատուններ շինեմ՝ ըսելով՝ ի-
րեն պատուհաններ կը բանայ , ու
զանիկայ եղևնափայտով կը պատէ ,
15 ու նօթով կը ներկէ ։ Միթէ դուն
*շատ եղևնափայտեր ժողվելովդ՝
թագաւո՞ր պիտի ըլլաս ։ [հ]Չէ՞․ որ
քու հայրդ կերաւ ու խմեց ․ նաև
իրաւունք ու արդարութիւն ըրաւ ․
ան ատենը [ձ]անոր աղէկ եղաւ ․
16 Աղքատին ու տնանկին դատը տե-
սաւ ․ ան ատենը անոր աղէկ եղաւ ․
միթէ զիս գիտնալը ասիկայ չէ՞ ,
17 կ'ըսէ Տէրը ։ [ղ]Վասն զի քու աչ-
քերդ ու սիրտդ՝ ուրիշ բանի վրայ
չէ , բայց միայն քու ագահու-
թեանդ , և անմեղ արիւն թափե-
լու , և անիրաւութեան ու բռնա-
ւորութեան վրայ է , որ անանկ ը-
նես ։
18 Անոր համար Յուդայի թագա-
ւորին Յովսիայի որդւոյն Յովակի-
մին վրայով՝ Տէրը այսպէս կ'ըսէ ․
[ճ]Անոր վրայ պիտի չողբան՝ ըսելով ․
[մ]Վա՜յ եղբայրս , կամ վա՜յ քոյրս ․
անոր վրայ պիտի չողբան՝ ըսելով ․
Վա՜յ տէր իմ , կամ վա՜յ անոր փա-
19 ռացը ։ [յ]Անիկայ իշու թաղումով
պիտի թաղուի , և քաշելով պիտի
տարուի , ու Երուսաղէմի դռնե-
րէն դուրս պիտի նետուի ։
20 Լիբանանը ելիր , ու աղաղակէ՛ ։
Եւ Բասանի վրայ ձայնդ ձգէ՛ , ու
Աբարիմէն աղաղակէ՛ ․ վասն զի
քու բոլոր հոմանիներդ կոտրուե-
21 ցան ։ Երբոր դուն յաջողութեան
մէջ էիր՝ քեզի զրուցեցի ․ [ն]դուն
ըսիր ․ Մտիկ չեմ ըներ ․ [ն]քու ման-
կութենէդ 'ի վեր ճամբադ աս է ,
22 որ իմ խօսքս մտիկ չընես ։ [շ]Քու
բոլոր հովիւներդ հովը պիտի կոր-
ծանէ , ու [ո]հոմանիներդ գերութեան
պիտի երթան ․ յիրաւի ան ատենը
բոլոր չարութեանդ համար պիտի
ամչնաս , ու պիտի պատկառիս ։
23 Ո՛վ Լիբանանի մէջ բնակող , ու
եղևիններու մէջ բոյն ունեցող ,
երբոր քեզի [չ]ծննդական կնոջ եր-
կանցը պէս ցաւեր գան , ո՜րչափ
24 ողորմելի պիտի ըլլաս ։ Ես կեն-
դանի եմ՝ կ'ըսէ Տէրը , ո՛վ Յու-
դայի թագաւոր՝ Յովակիմի որդին
[պ]†Յեքոնիա , [ջ]թէև իմ աջ ձեռ-
քիս վրայ կնիք ալ ըլլաս , անկէ
25 ալ քեզ պիտի փրցնեմ ․ [ռ]Եւ
քեզ՝ քու հոգիդ փնտռողներուն
ձեռքը՝ ու ան մարդիկներուն ձեռ-
քը՝ որոնց երեսէն դուն կը վախ-
նաս , և Բաբելոնի Նաբուգոդոնո-
սոր թագաւորին ձեռքը ու Քաղ-
դէացւոց ձեռքը պիտի մատնեմ ․
26 [ս]Եւ քեզ՝ ու քու մայրդ որ քեզ
ծնաւ , օտար երկիր պիտի նետեմ ,
ուր որ ծնած չէք , և հոն պիտի
27 մեռնիք ։ Ու պիտի չդառնան ան
երկիրը , ուր որ դառնալու ‡ կը
28 յուսան ։ Միթէ աս Յեքոնիա ը-
[վ]սուած մարդը անարգուած ու կոտ-
րած սափո՞ր մըն է , կամ թէ ա-
նանկ ամա՞ն մըն է՝ որուն մէկը չը-
հաճիր ․ ինչո՞ւ համար ինքը ու իր
սերունդը նետուեցան , ու իրենց
29 չգիտցած երկիրը քշուեցան ։ [տ]Ո՛վ
երկիր , երկիր , երկիր , Տէրոջը
30 խօսքը մտիկ ըրէ ․ Տէրը այսպէս
կ'ըսէ ․ Աս մարդը [ր]անզաւակ գրե-
ցէք ․ աս մարդը իր օրերուն մէջը
յաջողութիւն պիտի չգտնէ ․ քան-
զի անոր սերունդէն բնաւ մէկը յա-
ջողութիւն պիտի չգտնէ , [ց]որ Դա-
ւիթի աթոռին վրայ նստի , և այ-
սուհետև Յուդայի վրայ թագաւո-
րութիւն ընէ ։

## ԳԼ. ԻԳ

1 Մարգարէն կը նախաձայնէ թէ ցրուած հօտը նորէն պիտի ժողվուի ։ 5 Քրիստոս զանոնք պիտի կառավարէ ու փրկէ ։ 9 Սուտ մարգարէններուն դէմ , 33 ու ճշմարիտ մարգարէութիւնները ծաղր ընողներուն դէմ խօսք ։

1 Վա՜յ [ւ]ան հովիւներուն՝ որ իմ
արօտիս ոչխարները կը կորսն-
ցնեն ու կը ցրուեն , կ'ըսէ Տէրը ։
2 Անոր համար՝ այսպէս կ'ըսէ Իսրա-
յէլին Տէր Աստուածը՝ ան հովիւ-
ներուն վրայով , որ իմ ժողո-
վուրդս կը հովուեն ․ դուք իմ ոչ-
խարներս ցրուեցիք , ու զանոնք
վռնտեցիք , և անոնց այցելութիւն

ը Օր․ իթ․ 24 , 25 ։ գ Թագ․ թ․ 8 , 9 ։
թ դ Թագ․ իբ․ 17 ։ բ Մն․ լդ․ 25 ։
ժ դ Թագ․ իբ․ 20 ։
ի Հմր 11 ։
լ Տես ա Մն․ գ․ 15 ․ և բաղդատէ՛ դ Թագ․ իգ․ 30 ին հետ ։
խ Տես դ Թագ․ իգ․ 34 ։
ծ դ Թագ․ իգ․ 35 ։ Հմր 18 ։
կ Ղև․ ժթ․ 13 ։ բ Օր․ իդ․ 14 , 15 ։ Միք․ գ․ 10 ։ Ամ․ բ․ 9 ։ Յակ․ ե․ 4 ։
* Եբր․ եղևնափայտին նախանձելովդ
հ դ Թագ․ իգ․ 25 ։
ձ Սաղ․ ճիը․ 2 ։ Եա․ գ․ 10 ։
ղ Եզեկ․ ժթ․ 6 ։
Կոտորուեցաւ՝ 599
ճ Գլ․ ժզ․ 4 , 6 ։
մ Տես գ Թագ․ ժգ․ 30 ։
յ բ Մն․ լզ․ 6 ։ Գլ․ լզ․ 30 ։
599

Ն․ Ք․ Գ․ Ք․ իրր 599
ն Գլ․ գ․ 25 ։ է․ 33 , ...
շ Գլ․ իդ․ 1 ։
ո Հմր 20 ։
չ Գլ․ զ․ 24 ։
պ Տես դ Թագ․ իդ․ 6 , 8 ։ ա Մն․ գ․ 16 ։ Գլ․ լէ․ 1 ։
† Եբր․ Քոնիա ։
ջ Երգ․ ը․ 6 ։ Անգ․ բ․ 23 ։
ռ Գլ․ լդ․ 20 ։
ս դ Թագ․ իդ․ 15 ։ բ Մն․ լզ․ 10 ։
‡ Եբր․ իրենց անձը կը վերցնեն ։
վ Սաղ․ լա․ 12 ։ Գլ․ խը․ 38 ։ Ովս․ ը․ 8 ։
տ բ Օր․ լբ․ 1 ։ Եա․ ա․ 2 ։ Միք․ ա․ 2 ։
ր Տես ամն․ գ․ 16 , 17 ։ Մատ․ ա․ 12 ։
ց Գլ․ լզ․ 30 ։
ւ Գլ․ ժ․ 21 ։ իբ․ 22 ։ Եզեկ․ լդ․ 2 ։

Ն. Ք. ԶՓ. Թուր 599

Ե Եզ. լդ. 34 ։ Զ Գլ. լբ. 37 ։ Եզեկ. լդ. 13 ։
* Կամ՝ արօտները
Է Գլ. գ. 15 ։ Եզեկ. լդ. 23 ։
Ը Ես. դ. 2 ։ ժա. 1 ։ Ի. 10. 11 ։ Գլ. լգ. 14. 15. 16 ։ Դան. թ. 24 ։ Զաք. գ. 8 ։ զ. 12 ։ Յով. ա. 45 ։
Թ Սաղ. հբ. 2 ։ Ես. թ. 7 ։ լբ. 1. 18 ։
Ժ Բ Օր. լգ. 28 ։ Զաք. ժգ. 11 ։
ԺԱ Գլ. լբ. 37 ։
ԺԲ Գլ. լգ. 16 ։ ա Կոր. ա. 30 ։
ԺԳ Գլ. ժզ. 14 ։ 15 ։
ԺԴ Ես. խգ. 5. 6 ։ Հմր 8 ։
ԺԵ Յես. Ամբ. գ. 16 ։
ԺԶ Գլ. ե. 7. 8 ։ թ. 2 ։
ԺԷ Ովս. դ. 2. 3 ։
ԺԸ Գլ. թ. 10 ։ ժբ. 4 ։
ԺԹ Գլ. զ. 13 ։ ը. 10 ։ Սոփ. գ. 4 ։
Ի Գլ. ԺԱ. 30 ։ ժա. 15 ։ լբ. 34 ։ Եզեկ. ը. 11 ։ ԻԳ. 39 ։
ԻԱ Սաղ. լե. 6 ։ Առակ. դ. 19 ։ Գլ. ժգ. 16 ։
ԻԲ Գլ. ժա. 23 ։
ԻԳ Գլ. բ. 8 ։
ԻԴ Ես. Թագ. 13 ։

չըրիք. Ահա ես ձեր գործոցը չա-
րութեանը համար՝ ձեզի այցելու-
թիւն պիտի ընեմ, կ'ըսէ Տէրը.
3 Ու ես իմ ոչխարներուս մնացորդը
պիտի ժողվեմ ան բոլոր երկիրնե-
րէն՝ ուր որ զանոնք փշեր եմ, և
զանոնք իրենց *փարախները պիտի
դարձընեմ, և պիտի աճին ու շատ-
4 նան ։ Ու անոնց վրայ հովիւներ
պիտի դնեմ, որ զանոնք հովուեն.
և անոնք մէյմըն ալ պիտի չվախ-
նան, ու պիտի չզարհուրին, ու
պիտի չպակսին, կ'ըսէ Տէրը ։
5 Ահա օրեր կու գան՝ կ'ըսէ Տէ-
րը, որ Դաւիթէն արդարութեան
շառաւիղ մը պիտի հանեմ, որ
թագաւորի պէս թագաւորութիւն
պիտի ընէ, իմաստութեամբ պիտի
վարուի, ու երկրի վրայ իրաւունք
ու արդարութիւն պիտի ընէ ։
6 Անոր օրերը Յուդան պիտի ազա-
տի, և Իսրայէլը ապահովութեամբ
պիտի բնակի. ու Սաս է անոր ա-
նունը՝ որով պիտի կոչուի, Տէրը
7 մեր արդարութիւնը ։ Անոր համար
ահա օրեր կու գան՝ կ'ըսէ Տէրը,
որ ալ պիտի չըսուի թէ՝ Կենդանի
է Տէրը՝ որ Իսրայէլի որդիքը Ե-
8 գիպտոսի երկրէն հանեց. Հապա՝
Կենդանի է Տէրը՝ որ Իսրայէլի
տանը սերունդը հանեց ու բերաւ
հիւսիսի երկրէն, և ամեն բոլոր եր-
կիրներէն՝ ուր որ զանոնք փշեր էի.
ու անոնք իրենց երկրին մէջը պիտի
բնակին ։
9 Մարգարէներուն համար՝ սիրտս
ներսի դիս կը կոտրի. Բոլոր ոսկոր-
ներս կը դողան. Տէրոջը երեսէն,
ու անոր սուրբ խօսքերուն երեսէն
գինով մարդու պէս, և գինին գը-
լուխը զարկած մարդու պէս եղայ ։
10 Քանզի երկիրը շնացողներով լե-
ցուած է. քանզի անէծքի պատ-
ճառով երկիրը սուգ կը բռնէ.
Անապատին արօտները չորցան,
որովհետև անոնց ճամբան չար ե-
ղաւ. և անոնց ոյժը ուղղութեան
11 համար չէ ։ Վասն զի թէ մար-
գարէն և թէ քահանան պղծուե-
ցան. Անոնց չարութիւնը իմ
տանս մէջն ալ գտայ, կ'ըսէ Տէրը ։
12 Անոր համար անոնց ճամբաները՝
խաւարի մէջ սահեցընող տեղերու
պէս պիտի ըլլան անոնց. անոնք
պիտի մղուին ու հոն պիտի իյնան.
վասն զի ես անոնց այցելութեան
տարին՝ անոնց վրայ չարիք պիտի
բերեմ, կ'ըսէ Տէրը ։
13 Եւ Սամարիայի մարգարէներուն
մէջը անզգամութիւն տեսայ. Բա-
հաղին անունով մարգարէութիւն
կ'ընէին, և իմ ժողովուրդս Իսրա-
14 յէլը կը մոլորցընէին ։ Ու Երու-
սաղէմի մարգարէներուն մէջը սոս-
կալի բան տեսայ. Անոնք շնու-
թիւն կ'ընեն, ու ստութեան մէջ
կը քալեն, և չարագործներուն
ձեռքերը կ'ուժովցընեն, որ չդառ-
նան՝ ամէն մէկը իր չարութենէն.
անոնց ամէնը ինծի Սոդոմի պէս,
ու անոր բնակիչները Գոմորի պէս
15 եղան ։ Ասոր համար զօրաց Տէրը՝
մարգարէներուն վրայով այսպէս
կ'ըսէ. Ահա ես անոնց օշինդր
պիտի կերցընեմ, և անոնց դառ-
նութեան ջուր պիտի խմցընեմ.
վասն զի Երուսաղէմի մարգարէնե-
րէն ամբարշտութիւն ելաւ, ու
բոլոր երկրին մէջ տարածուեցաւ ։
16 Զօրաց Տէրը այսպէս կ'ըսէ.
Ձեզի մարգարէութիւն ընող մար-
գարէից խօսքերուն մտիկ մի՛ ընէք.
անոնք ունայնութեան կը տանին
ձեզ, իրենց սրտին տեսիլքը կը
խօսին, ու չէ թէ Տէրոջը բերնէն ։
17 Անոնք զիս անարգողներուն կը խօսին
ու կ'ըսեն. Տէրը ըսաւ. Ձեզի
խաղաղութիւն պիտի ըլլայ. և ի-
րենց սրտին կամակորութեանը մէջ
բոլոր քալողներուն կ'ըսեն. Ձեր
18 վրայ չարիք պիտի չգայ ։ Վասն զի
Տէրոջը խորհուրդին մէջ ո՞վ
կայնեցաւ. ո՞վ տեսաւ, ու անոր
խօսքը լսեց. անոր խօսքին ո՞վ ա-
կանջ տուաւ, ու մտիկ ըրաւ ։
19 Ահա Տէրոջը մրրիկը սրտմտու-
թեամբ ելաւ. անիկայ սաստիկ
մրրիկ է. ամբարիշտներուն գլխուն
20 վրայ պիտի յարձակի ։ Տէրոջը
բարկութիւնը ետ պիտի չդառ-
նայ, մինչև որ իր սրտին խոր-
հուրդները չկատարէ ու չհաստա-
տէ. Վերջի օրերը անիկայ աղէկ
21 պիտի հասկընաք ։ Ես մարգա-
րէները ես չխրկեցի, բայց անոնք
կը վազեն. ես անոնց չխօսեցայ,
բայց անոնք կը մարգարէանան ։
22 Իսկ թէ որ անոնք իմ խորհուր-
դիս մէջը կեցած ըլլային, ան ա-
տենը իմ խօսքս՝ իմ ժողովուրդիս
լսել պիտի տային. և զանոնք՝ ի-
րենց չար ճամբաներէն, ու իրենց
չար գործքերէն պիտի դարձընէին ։
23 Միթէ ես մօտանց Աստուած
եմ, ու հեռուանց Աստուած չե՞մ՝
24 կ'ըսէ Տէրը ։ Կամ թէ մէկը ծա-
ծուկ տեղուանք կրնա՞յ պահուիլ,
որ ես զանիկայ չտեսնեմ, կ'ըսէ
Տէրը. Միթէ երկինքը ու երկիրը
լեցընողը ես չե՞մ՝ կ'ըսէ Տէրը ։
25 Իմ անունովս սուտ մարգարէու-
թիւն ընող մարգարէներուն ըսած-
ները լսեցի, որ կ'ըսեն. Երազ
26 տեսայ, երազ տեսայ ։ Մինչև
ե՞րբ ասիկայ սուտ մարգարէութիւն
ընող մարգարէներուն սրտին մէջը

Ն. Ք. ԶՓ. Թուր 599

ԻԵ Գլ. իթ. 23 ։ Հմր 26 ։
ԻԶ Եզեկ. ժգ. 22 ։
ԻԷ Բ Օր. լբ. 32 ։ Ես. ա. 9. 10 ։
ԻԸ Գլ. ը. 14 ։ թ. 15 ։
ԻԹ Գլ. ժգ. 14 ։ Հմր 21 ։
Լ Գլ. զ. 14 ։ ը. 11 ։ Եզեկ. ժգ. 10 ։ Զաք. ժ. 2 ։
ԼԱ Միք. գ. 11 ։
ԼԲ Յոբ. ժե. 8 ։ ա Կոր. բ. 16 ։
ԼԳ Գլ. իե. 32 ։ լ. 28 ։
ԼԴ Գլ. լ. 24 ։
ԼԵ Ծն. խթ. 1 ։
ԼԶ Գլ. ժդ. 14 ։ իէ. 15 ։ իթ. 9 ։
ԼԷ Հմր 18 ։
ԼԸ Գլ. իե. 5 ։
ԼԹ Սաղ. ճլթ. 7 ։ Ա. Ամով. թ. 2 ։ 3 ։
Խ Գ Թագ. ը. 27 ։ Սաղ. ճլթ. 7 ։

Ն. Ք. ՎՃ. Իրր 599

պիտի ըլլայ, որ իրենց սրտին նենգութիւնները կը մարգարէանան։
27 Անոնք իրենց երազներովը՝ որ իրարու կը պատմեն, իմ անունս՝ իմ ժողովուրդիս մոռցընել կը խորհին, [ա] ինչպէս որ անոնց հայրերը Բահաղին պատճառովը իմ անունս
28 մոռցան։ Երազ ունեցող մարգարէն՝ թող երազ պատմէ, իսկ իմ խօսքս ունեցողը՝ ճշմարտութեամբ թող իմ խօսքս խօսի. յարդը՝ ցորենին քովը ի՞նչ է՝ կ'ըս-
29 է Տէրը։ Միթէ իմ խօսքս կրակի պէս չէ՞, կ'ըսէ Տէրը, ու ապառաժը կոտրտող մուրճի պէս
30 չէ՞։ Անոր համար ահա [բ] ես ան մարգարէներուն դէմ եմ, կ'ըսէ Տէրը, որոնք ամէն մէկը իր ընկերէն իմ խօսքերս կը գողնան։
31 Ահա ես ան մարգարէներուն դէմ եմ, կ'ըսէ Տէրը, որ իրենց լեզուները կը գործածեն, ու կ'ըսեն.
32 Անիկայ ըսաւ։ Ահա ես ան սուտ երազներ մարգարէացողներուն դէմ եմ, կ'ըսէ Տէրը, որ զանոնք պատմելով իմ ժողովուրդս կը մոլորցընեն՝ իրենց ստութիւններովը [գ] ու սնապարծութիւնովը. ու ես զանոնք չխրկեցի, և անոնց չպատուիրեցի. ու անոնք այս ժողովուրդին ամենևին օգուտ մը պիտի չընեն, կ'ըսէ Տէրը։
33 Ուստի երբոր այս ժողովուրդը, կամ մարգարէ մը, կամ քահանայ մը քեզի հարցընէ ու ըսէ թէ՝ Տէրոջը *բեռը ի՞նչ է. ան ատենը անոնց ըսես. Ի՞նչպէս բեռ. [դ] Ես ձեզ անշուշտ պիտի թողում, կ'ըս-
34 է Տէրը։ Եւ ան մարգարէն, կամ քահանան, կամ ժողովուրդը որ Տէրոջը բեռը կ'ըսէ, ան մարդուն՝ ու անոր տանը այցելութիւն
35 պիտի ընեմ։ Ամէն մարդ իր ընկերին, ու ամէն մարդ իր եղբօրը այսպէս ըսէք. Տէրը ի՞նչ պատասխան տուաւ, և Տէրը ի՞նչ
36 խօսեցաւ։ Ու մէյմըն ալ Տէրոջը բեռը չյիշէք. վասն զի անոր բեռը՝ ամէն մարդուն խօսքը պիտի ըլլայ. բայց դուք կենդանի Աստուծոյն՝ զօրաց Տէրոջը մեր Աս-
37 տուծոյն խօսքը փոխեցիք։ Մարգարէին այսպէս ըսես. Տէրը քեզի ի՞նչ պատասխան տուաւ, և Տէրը
38 ի՞նչ խօսեցաւ։ Բայց որովհետև Տէրոջը բեռը կ'ըսէք, անոր համար Տէրը այսպէս կ'ըսէ. Որովհետև աս խօսքը՝ [illegible] Տէրոջը բեռը կ'ըսէք, թէև ես ձեզի [illegible] խրկեցի, ու Տէրոջը բեռը մի՛ ըսէք՝ ըսի,
39 Անոր համար ահա ես [ե] ձեզ բոլորովին պիտի մոռնամ, ու [զ] երեսէս պիտի ձգեմ ձեզ՝ և ան քաղաքը՝

[ա] Դատ. Գ. 7. Ը. 33. 34.
[բ] Բ Օր. ԺԸ. 20. Գլ. ԺԴ. 14. 15.
[գ] Սոփ. Գ. 4.
* Յն. պատգամը
[դ] Հմր 39.
[ե] Ովս. Դ. 6.
[զ] Հմր 33.

որ ձեզի ու ձեր հայրերուն տուի.
40 Եւ ձեր վրայ [ա] յաւիտենական նախատինք, ու յաւիտենական անարգանք պիտի դնեմ, որ պիտի չմոռցուի։

## ԳԼ. ԻԴ

1 Աղէկ ու գէշ թուզերուն օրինակովը՝ 4 մարգարէն կը ծանուցանէ գերութեան մէջ եղողներուն դառնալը, 8 և Սեդեկիային և ուրիշներուն կործանումը։

1 [ա] Բաբելոնի Նաբուգոդոնոսոր թագաւորը՝ Յուդայի թագաւորը [բ] Յովակիմի որդին Յեքոնիան, և Յուդայի իշխանները, ու հիւսները, ու դարբինները Երուսաղէմէն գերի առնելէն ու Բաբելոն տանելէն ետքը, [գ] Տէրը ինծի տեսիլք ցուցուց, որ ահա Տէրոջը տաճարին առջևը դրուած երկու կողով
2 թուզ կար։ Մէկ կողովին մէջը խիստ աղէկ թուզեր կային՝ կանխահաս թուզերու պէս, ու մէկալ կողովին մէջը խիստ գէշ թուզեր կային, այնպէս որ՝ գէշութենէն
3 անոնց ուտուիլը անկարելի էր։ Եւ Տէրը ինծի ըսաւ. Ո՛վ Երեմիա՝ ի՞նչ կը տեսնես. ու ես ըսի. Թուզեր. աղէկ թուզերը խիստ աղէկ են, ու գէշերը՝ շատ գէշ են. այնպէս որ՝ գէշութենէն անոնց ուտուիլը անկարելի է։
4 Ան ատենը Տէրոջը խօսքը ինծի
5 եղաւ, ըսելով. Իսրայէլին Տէր Աստուածը այսպէս կ'ըսէ. Աս աղէկ թուզերուն պէս պիտի բռնեմ Յուդայէն գերի քշուածները՝ որոնք աս տեղէն Քաղդէացւոց երկիրը խրկեցի՝ իրենց աղէկ ըլլալու հա-
6 մար. Եւ իմ աչքերս անոնց վրայ պիտի հաստատեմ բարութեան համար, ու [դ] զանոնք աս երկիրը պիտի դարձընեմ, և [ե] զանոնք պիտի շինեմ, ու պիտի չփլցընեմ. և զանոնք պիտի տնկեմ, ու պիտի
7 չխլեմ։ Եւ անոնց [զ] [illegible] սիրտ մը պիտի տամ, որ զիս ճանչնան թէ ես եմ Տէրը. ու անոնք [է] իմ ժողովուրդս պիտի ըլլան, ու ես անոնց Աստուածը պիտի ըլլամ. վասն զի [ը] իրենց բոլոր սրտովը ինծի
8 պիտի դառնան։ Եւ ինչպէս են [թ] գէշ թուզերը որ գէշութենէն չեն ուտուիր, Տէրը այսպէս կ'ըսէ. Յուդայի թագաւորը Սեդեկիան, ու անոր իշխանները, ու Երուսաղէմի մնացորդը՝ որ աս երկրիս մէջ մնացեր են, նաև [ժ] Եգիպտոսի երկրին մէջ բնակողները՝ այնպէս պիտի
9 ընեմ. Եւ զանոնք [ի] երկրիս բոլոր թագաւորութիւններուն մէջ նեղութեան ու թշուառութեան պիտի մատնեմ, որպէս զի անոնք

Ն. Ք. ՎՃ. Իրր 599
[ա] Գլ. Ի. 11.
Իրր 598
[ա] Դ Թագ. ԻԴ. 12. Ճ. Բ Մն. ԼԶ. 10.
[բ] Տեսլ. Իր. 24. Ա. ԻԹ. 2.
[գ] Ամով. Է. 1. 4. Ը. 1.
[դ] Գլ. ԽԲ. 15. ԻԹ. 10.
[ե] Գլ. ԼԸ. 41. ԼԳ. Ծ. Իբ. 10.
[զ] Բ Օր. Լ. 6. Գլ. ԼԲ. 39. Եզեկ. ԺԱ. 19. ԼԶ. 26. 27.
[է] Գլ. Լ. 22. ԼԱ. 33. ԼԲ. 38.
[ը] Գլ. ԻԹ. 13.
[թ] Գլ. ԻԹ. 17.
[ժ] Գլ. ԽԴ. 1.
[ի] Բ Օր. ԻԸ. 25. 37. Գ Թագ. Թ. 7. Բ Մնաց. 20. Գլ. ԺԵ. 4. ԻԹ. 18. ԼԴ. 17.

Ն. Ք. ԳՔ. իրր 599

Սաղ. ԽԴ. 13, 14. Գլ. ԻԹ. 18, 22.

ՆՆախատինք, առակ, անարգանք
ու անէծք ըլլան ան բոլոր տե-
ղուանքը՝ ուր որ զանոնք պիտի
10 քշեմ։ Եւ անոնց վրայ՝ սուրը, սովը
ու ժանտախտը պիտի ղրկեմ, մին-
չեւ որ հատնին ան երկրին վրայէն՝
որն որ իրենց ու իրենց հայրերուն
տուի։

## ԳԼ. ԻԵ

1 Երեմիա կը յանդիմանէ Հրէաները՝ մարգարէներուն չհնազանդելնուն համար. 8 ու կը նախագուշակէ եօթանասուն տարուան գերութիւնը. 12 և անկէ ետքը Բաբելոնի կործանումը. 15 գինիի գաւաթի մը օրինակով՝ շատ ազգերու կործանումը կը ցուցնէ. 34 Հովիւներուն աղաղակը։

Ն. Ք. ԳՔ. 607 վերջանալով՝ 606 կը սկսի — Գլ. ԼԶ. 1.

1 Յուդայի թագաւորին Յովսիայի
որդւոյն Յովակիմին չորրորդ
տարին՝ որ Բաբելոնի Նաբուգոդո-
նոսոր թագաւորին առաջին տարին
էր, բոլոր Յուդայի ժողովուրդին
վրայով՝ Երեմիային եղած խօսքն է,
2 Որն որ Երեմիա մարգարէն բոլոր
Յուդայի ժողովուրդին ու բոլոր
Երուսաղէմի բնակիչներուն խօսե-
ցաւ ու ըսաւ.

629 էն մինչեւ 606. Գլ. Ա. 2.

3 Յուդայի թագաւորին Ամոնի
որդւոյն Յովսիային տասնուերեք-
երորդ տարիէն մինչեւ աս օրս՝ որ
քսանուերեք տարի է, Տէրոջը խօս-
քը ինծի եղաւ, ու ես ձեզի խօսե-
ցայ կանուխ ելլելով ու խօսելով,
4 բայց մտիկ չըրիք։ Եւ Տէրը ձեզի
ղրկեց իր բոլոր ծառաները՝ մար-
գարէները, կանուխ ելլելով ու
ղրկելով, բայց մտիկ չըրիք, ու
մտիկ ընելու համար ականջնիդ չը-
5 ծռեցիք, Որոնք կ'ըսէին. Ամէն
մէկերնիդ ձեր չար ճամբայէն ու
ձեր չար գործքերէն դարձէք, որ
բնակիք յաւիտենէ յաւիտենից
ան երկրին մէջը՝ որ Տէրը ձեզի ու
6 ձեր հայրերուն տուաւ. Եւ օտար
աստուածներուն ետեւէն մի՛ եր-
թաք՝ անոնց ծառայելու ու երկըր-
պագութիւն ընելու համար. և զիս
ձեր ձեռացը գործքերովը մի՛ բար-
կացընէք, որ ձեզի չարիք չընեմ.
7 Բայց դուք ինծի մտիկ չըրիք՝ կ'ըսէ
Տէրը, որ զիս ձեր ձեռացը գործ-
քերովը բարկացընէք, ու ձեզի
դէշ ըլլայ։
8 Ասոր համար զօրաց Տէրը այսպէս
կ'ըսէ. Որովհետեւ իմ խօսքերս մը-
9 տիկ չըրիք, Ահա ես պիտի ղրկեմ,
ու բոլոր հիւսիսի ազգատոհմնե-
րը, և իմ ծառաս Բաբելոնի Նա-
բուգոդոնոսոր թագաւորը պիտի
առնեմ, կ'ըսէ Տէրը, ու զանոնք
աս երկրիս վրայ, և անոր բնակ-
չացը վրայ, ու բոլոր աս չրջակայ
ազգերուն վրայ պիտի բերեմ, ու
զանոնք նզովածի պէս բնաջինջ

Գլ. Է. 13. Ժա. 7, 8, 10. Ժզ. 10, 11. Ժզ. 12. ԺԷ. 23. ԺԸ. 12. ԺԹ. 15. ԻԲ. 21.
Գլ. Է. 13, 25. Իզ. 5. ԻԹ. 19.
Դ Թագ. ԺԷ. 13. Դլ. ԺԸ. 11. ԼԵ. 15. Յովն. Գ. 8.
Որ. Օր. ԼԲ. 21. Գլ. Է. 19. ԼԲ. 30.
Գլ. Ա. 15. Գլ. ԻԷ. 6. ԽԳ. 10. Տես Ես. ԽԴ. 28. ԽԵ. 1. Գլ. Խ. 2.

պիտի ընեմ, և զանոնք զարման-
քի ու սուլելու նշաւակ պիտի ընեմ,
ու յաւիտենական աւերակի պիտի
10 դարձընեմ։ Եւ անոնցմէ ցնծու-
թեան ձայնը և ուրախութեան
ձայնը, փեսային ձայնը ու հարսին
ձայնը, երկանաքարին ձայնը ու ճրա-
11 գին լոյսը պիտի կորսնցընեմ. Եւ
աս բոլոր երկիրը անապատ ու
ամայութիւն պիտի ըլլայ. և աս
ազգերը եօթանասուն տարի Բա-
բելոնի թագաւորին պիտի ծառա-
յեն։
12 Ու եօթանասուն տարին լմըն-
նալէն ետքը՝ Բաբելոնի թագաւո-
րին, ու ան ազգին այցելութիւն
պիտի ընեմ իրենց անօրէնութեա-
նը համար. նաեւ Քաղդէացւոց
երկրին այցելութիւն պիտի ընեմ,
կ'ըսէ Տէրը, և զանիկայ յաւիտե-
նական ամայութեան պիտի դար-
13 ձընեմ. Ու ան երկրին վրայ պիտի
բերեմ ան բոլոր խօսքերը որ ես
անոր դէմ խօսեցայ, այսինքն Երե-
միային բոլոր ազգերուն վրայով
ըրած մարգարէութեանը աս գըր-
քին մէջը գրուած բոլոր բաները։
14 Քանզի զանոնք ալ՝ շատ ազգեր
ու մեծ թագաւորներ՝ իրենց
ծառայ պիտի ընեն. ու ես անոնց
հատուցում պիտի ընեմ իրենց ը-
րածներուն ու իրենց ձեռացը
գործքերուն համեմատ։
15 Քանզի Իսրայէլին Տէր Աստուա-
ծը ինծի այսպէս ըսաւ. Աս նըբար-
կութեան գինիին գաւաթը ձեռ-
քէս առ, ու զանիկայ խմցուր ան
բոլոր ազգերուն՝ որոնց որ ես քեզ
16 կը ղրկեմ. Եւ խմեն, ու խռո-
վին, ու անոնց մէջը ղրկած սուրիս
17 երեսէն յիմարին։ Ուստի Տէրոջը
ձեռքէն գաւաթը առի, ու խմցու-
ցի ան բոլոր ազգերուն, որոնց որ
18 Տէրը զիս ղրկեց. Երուսաղէմին,
ու Յուդայի քաղաքներուն, և ա-
նոր թագաւորներուն, ու անոր
իշխաններուն՝ որ զանոնք անա-
պատ, ամայութիւն, անարգանք
ու անէծք ընէ, ինչպէս որ այսօր
19 կ'երեւնայ. Եգիպտոսի Փարաւոն
թագաւորին, և անոր ծառանե-
րուն ու իշխաններուն, ու անոր
20 բոլոր ժողովուրդին. Եւ բոլոր
խառնիճաղանճ ժողովուրդնե-
րուն, ու Հուս երկրին բոլոր
թագաւորներուն, ու Փղշտացւոց
երկրին բոլոր թագաւորներուն,
այսինքն՝ Ասկաղոնի, Գազայի. ու
Ակկարոնի, և Ազովտոսի մնա-
21 ցորդին. Եդովմին, ու Մովա-
22 բին, ու Ամմոնի որդւոցը. Եւ
Տիւրոսի բոլոր թագաւորներուն,
ու Սիդոնի բոլոր թագաւորներուն,

Ն. Ք. ԳՔ. իրր 606

Գլ. ԺԶ. 16.
Ես. ԻԴ. 7. Գլ. Է. 34. ԺԶ. 9. Եզեկ. ԻԶ. 13. Ովս. Բ. 11. Յայտ. ԺԸ. 23.
Բ Ժող. Ժբ. 4.

Կը սկսի իրր 606. Դ Թագ. ԻԴ. 1. Եւ կը վերջանայ իրր 536. Եզր. Ա. 1.
Եր. Մն. ԼԶ. 21, 22. Եզր. Ա. 1. Գլ. ԻԹ. 10. Դան. Թ. 2.
Ես. ԺԳ. 19. ԺԴ. 23. ԻԱ. 1. ԽԷ. 1. Գլ. Ծ. 3, 13, 23, 39, 40, 45. ԾԱ. 25, 26.
Գլ. Ծ. 9. ԾԱ. 27, 28.
Գլ. Ծ. 41. ԾԱ. 27.
Գլ. ԻԵ. 7.
Գլ. Ծ. 29. ԾԱ. 6, 24.
Յոբ. ԻԱ. 20. Սաղ. ՀԵ. 8. Ես. ԾԱ. 17. Յայտ. ԺԴ. 10.
Գլ. ԾԱ. 7. Եզեկ. ԻԳ. 34. Նաւ. Գ. 11.
Հմր 9, 11.
Գլ. ԻԴ. 9.
Գլ. ԽԶ. 2, 25.
Հմր 24.
Յոբ. Ա. 1.
Գլ. ԽԵ. 1, 5, 7.
Տես Ես. Ի. 1.
Գլ. ԽԹ. 7, ԻԸ.
Գլ. ԽԸ. 1.
Գլ. ԽԹ. 1.
Գլ. ԽԷ. 4.

Ն. Ք. ԶՃ. Թիր 606

և ծովուն անդին կողմը եղող
կղզիներու թագաւորներուն .
23 Դեդանին , ու Թեմային , և Բու-
զին , ու ամէն իրենց մօրուքին ծայ-
24 րերը կտրողներուն . Եւ Արաբա-
ցւոց բոլոր թագաւորներուն , ու
անապատը բնակող խառնիճա-
ղանճ ժողովուրդին բոլոր թա-
25 գաւորներուն . Եւ Զամբրիի բո-
լոր թագաւորներուն , ու Եղամի
բոլոր թագաւորներուն , ու Մա-
26 րաց բոլոր թագաւորներուն . Եւ
իրարու մօտ կամ հեռու եղող
հիւսիսի բոլոր թագաւորներուն ,
ու երկրի երեսին վրայ եղող երկրիս
բոլոր թագաւորութիւններուն
խմցուցի . և անոնցմէ ետքը Սիսա-
27 կի թագաւորը պիտի խմէ ։ Ու
անոնց ըսես . Զօրաց Տէրը՝ Իսրա-
յէլին Աստուածը այսպէս կ'ըսէ .
Խմեցէ՛ք , ու գինովցէ՛ք , ու
փսխեցէ՛ք , և ձեր մէջը խրկելու
սուրիս երեսէն ինկէ՛ք , ու մի՛ ել-
28 լէք ։ Ու թէ որ գաւաթը քու
ձեռքէդ առնել չուզեն խմելու
համար , ան ատենը անոնց ըսես .
Զօրաց Տէրը այսպէս կ'ըսէ . Ան-
29 շուշտ պիտի խմէք . Քանզի ահա
ես իմ անունովս կոչուած քաղա-
քին վրայ չարիք բերելու սկսայ .
մի՞թէ դուք անպատիժ պիտի
մնաք . անպատիժ պիտի չմնաք .
քանզի երկրիս բոլոր բնակիչնե-
րուն վրայ սուր պիտի կանչեմ ,
կ'ըսէ զօրաց Տէրը ։
30 Ուստի դուն աս բոլոր խօսքերը
անոնց մարգարէանալով՝ անոնց ը-
սես . Տէրը բարձրէն պիտի գո-
ռայ , ու իր սուրբ բնակութենէն
իր ձայնը պիտի տայ . իր բնակա-
րանին վրայ սաստիկ ձայնով պի-
տի գոռայ . Խաղող կոխողներուն
աղաղակին պէս՝ երկրիս բոլոր բնա-
կիչներուն պատասխան պիտի տայ ։
31 Անոր բարձր ձայնը մինչև երկրիս
ծայրերը պիտի հասնի . վասն զի
Տէրը ազգերուն հետ դատաստան
ունի . ամէն մարմնոյ հետ
դատ պիտի վարէ , ամբարիշտ-
ները սուրի պիտի տայ , կ'ըսէ Տէ-
րը ։
32 Զօրաց Տէրը այսպէս կ'ըսէ .
Ահա չարիք պիտի ելլէ , ազգէ
ազգի պիտի անցնի . ու երկ-
րիս ծայրերէն մեծ մրրիկ պիտի
33 ելլէ ։ Եւ ան օրը Տէրոջմէ սպան-
նուածները՝ երկրիս մէկ ծայրէն
մինչև երկրիս մէկալ ծայրը պիտի
ըլլան . անոնց համար սուգ պիտի
չընուի . անոնք պիտի չժող-
վուին , ու պիտի չթաղուին . երկ-
րի երեսին վրայ աղբի պէս պիտի
ըլլան ։

34 Ողբացէ՛ք ով հովիւներ՝ ու ա-
ղաղակեցէ՛ք , և մոխիրի մէջ թաւա-
լեցէ՛ք ով հօտին ընտիրները . վասն
զի ձեր մորթուելու և ցիրուցան
ըլլալու օրերը լրացած է . ու պա-
տուական ամանի պէս պիտի իյ-
35 նաք ։ Եւ հովիւներուն փախչելու
ճամբան՝ ու հօտին ընտիրներուն
ազատուելու միջոցը պիտի կոր-
36 սուի ։ Հովիւներուն աղաղակին
ձայնը , և հօտին ընտիրներուն ոռ-
նալուն ձայնը կայ . վասն զի Տէրը
37 անոնց արօտները կորսընցուց . Ու
Տէրոջը սաստիկ բարկութեանը ե-
րեսէն՝ խաղաղութեան փարախները
38 ամայութեան դարձան ։ Առիւծի
պէս իր բնակարանը թո-
ղուց . քանզի բռնաւորին բարկու-
թեանը երեսէն , ու անոր սաստիկ
սրտմտութեանը երեսէն , անոնց
երկիրը ամայի եղաւ

## ԳԼ. ԾԲ

1 Երեմիա խոստմունքներով ու սպառնալիքնե-
րով՝ ապաշխարութեան կը յորդորէ ժողովուր-
դը . 9 աս պատճառով կը բռնուի , 10 ու կ'ամ-
բաստանուի ։ 12 Իր անձին ջատագովութիւնը ։
16 Դատաստանին մէջ կ'արդարանայ , Մի-
քիային 20 և Ուրիային օրինակները յիշելով ,
24 և Աքիկամին խնամքովը ։

1 Յուդայի թագաւորին՝ Յովսիայի
որդւոյն Յովակիմին թագաւո-
րութեանը սկիզբը՝ Տէրոջը կողմա-
նէ աս խօսքը եղաւ՝ ըսելով .
2 Տէրը այսպէս կ'ըսէ . Տէրոջը
տանը գաւիթին մէջը կայնէ , ու
Տէրոջը տունը երկրպագութիւն ը-
նելու եկող Յուդայի բոլոր քաղաք-
ներուն խօսէ ան ամէն խօսքերը՝
որ քեզի պատուիրեցի անոնց խօսե-
լու համար . մէկ խօսք մը ետ մի՛
3 ձգեր . Գուցէ մտիկ ընեն , ու ա-
մէն մարդ իր չար ճամբայէն դառ-
նայ . ես ալ զղջամ ան չարիքին
համար՝ որ անոնց չար գործքերուն
պատճառովը իրենց վրայ բերելու
4 կը խորհիմ ։ Եւ անոնց ըսես . Տէ-
րը այսպէս կ'ըսէ . Եթէ որ ինծի
մտիկ չընելով՝ ձեր առջևը դրած
5 օրէնքիս մէջ չքալէք , Ու ձեզի
խրկած ծառաներուս մարգարէնե-
րուն խօսքերը մտիկ չընէք , որ
կանուխ ելլելով զանոնք կը խրկէի ,
6 ու դուք մտիկ չըրիք . Ան ատենը
աս տունը Սելովի պէս պիտի ընեմ ,
և աս քաղաքը երկրիս բոլոր ազգե-
րուն անէծք պիտի ընեմ ։
7 Ու քահանաները , և մարգարէ-
ները , ու բոլոր ժողովուրդը լսե-
ցին , երբոր Երեմիա՝ Տէրոջը տա-
նը մէջ աս խօսքերը կը խօսէր ։
8 Ու երբոր Երեմիա լմընցուց ան բո-
լոր խօսքերը զրուցելը՝ որ Տէրը հրա-
մայեր էր բոլոր ժողովուրդին խօ-

Գլ. ԽԹ. 23 ։ Կամ՝ ծովեզերեայ երկիրներու Գլ. ԽԹ. 8 ։ Բ Մն. Թ. 14 ։ Տծ. Հմր 20 ։ Գլ. ԽԹ. 31 ։ Ծ. 37 ։ Եզեկ. Լ. 5 ։ Կամ՝ Զեմրանացւոց Գլ. ԽԹ. 34 ։ Գլ. Ծ. 9 ։ Գլ. Ծա. 41 ։ Ամբ. Բ. 16 ։ Ես. Ծա. 21 ։ Կզ. 6 ։ Դան. Թ. 18 ։ 19 ։ Առակ. Ժա. 31 ։ Գլ. ԽԹ. 12 ։ Եզեկ. Թ. 6 ։ Աբդ. 16 ։ Ղուկ. ԻԳ. 31 ։ Ա Պետ. Դ. 17 ։ Եզեկ. ԼԶ. 21 ։ Ես. ԽԲ. 13 ։ Յովել. Գ. 16 ։ Ամով. Ա. 2 ։ Սաղ. Ծա. 4 ։ Գլ. ԺԵ. 12 ։ Դ Թագ. Թ. 3 ։ Սաղ. Ճլբ. 14 ։ Ես. Ժզ. 9 ։ Գլ. ԻԸ. 33 ։ Ովս. Դ. 1 ։ Միք. Զ. 2 ։ Ես. Կզ. 16 ։ Յովել. Գ. 2 ։ Գլ. ԻԳ. 19 ։ Լ. 23 ։ Ես. Կզ. 16 ։ Գլ. Ժզ. 4 ։ 6 ։ Սաղ. ՀԹ. 3 ։ Գլ. Ը. 2 ։ Յայտ. Ժա. 9 ։

Ն. Ք. ԶՃ. Թիր 606 Գլ. Դ. 8 ։ Զ. 26 ։ Սաղ. Հզ. 2 ։ Կամ՝ բռնաւոր սուրին Ն. Ք. ԶՃ. 610 կամ՝ 609 կը սկսի Գլ. ԺԹ. 14 ։ Եզեկ. Գ. 10 ։ Մատ. ԻԸ. 20 ։ Գոր. Ի. 27 ։ Գլ. ԼԶ. 3 ։ Գլ. ԺԸ. 8 ։ Յովն. Գ. 8 ։ 9 ։ Ղև. ԻԶ. 14 ։ Բ Օր. ԻԸ. 15 ։ Գլ. Է. 13 ։ 25 ։ Ժա. Ն. ԻԵ. 3 ։ 4 ։ Ա Թագ. Դ. 10 ։ 11 ։ Սաղ. ՀԸ. 60 ։ Գլ. Է. 12 ։ 14 ։ Ես. ԿԵ. 15 ։ Գլ. ԻԴ. 9 ։

Ն․ Ք․ ԳՔ․ Իրր 609

սելու, քահանաները ու մարգարէ-
ները ու բոլոր ժողովուրդը զանիկայ
բռնեցին՝ ու ըսին. Դուն անպատ-
9 ճառ պիտի մեռնիս ։ Ինչո՞ւ հա-
մար Տէրոջը անունովը մարգարէու-
թիւն ըրիր՝ ըսելով. Աս տունը
Սելովի պէս պիտի ըլլայ, ու աս
քաղաքը աւերակ պիտի ըլլայ, և
հոն բնակիչ պիտի չըլլայ. ու բո-
լոր ժողովուրդը Տէրոջը տանը մէջ
Երեմիային վրայ ժողվուեցաւ ։
10 Ու երբոր Յուդայի իշխանները
աս բաները լսեցին, թագաւորին
տունէն Տէրոջը տունը ելան, և
Տէրոջը տանը նոր դրանը մուտքը
11 նստան ։ Ու քահանաները և մար-
գարէները՝ իշխաններուն ու բոլոր
ժողովուրդին խօսեցան ու ըսին.
Աս մարդը մեռնելու արժանի է.
ժ Գլ. ԼԸ. 4
քանզի ժ աս քաղաքին դէմ մար-
գարէութիւն ըրաւ, ինչպէս որ
դուք ձեր ականջներովը լսեցիք ։
12 Ու Երեմիա բոլոր իշխաններուն
ու բոլոր ժողովուրդին խօսեցաւ,
ու ըսաւ. Տէրը զիս ղրկեց որ աս
տանը ու աս քաղաքին վրայով ձեր
լսած բոլոր խօսքերը պատմելով՝
13 մարգարէութիւն ընեմ ։ Եւ հի-
է Գլ. Է. 8
մա է ձեր ճամբաները ու գործքերը
ուղղեցէ՛ք, ու ձեր Տէր Աստուծոյն
լ Հմր 3, 19
ձայնը մտիկ ըրէք. և լ Տէրը ձեր
վրայով ըսած չարիքին համար պի-
խ Գլ. ԼԸ. 5
14 տի զղջայ ։ Բայց ես խ ահա ձեր
ձեռքն եմ. ձեր աչքին աղէկ ու
15 շիտակ երեւցածը ըրէք ինծի ։ Սա-
կայն աղէ՛կ գիտցէք՝ որ եթէ դուք
զիս մեռցընէք, ձեր վրայ՝ ու աս
քաղաքին վրայ՝ և անոր բնակչա-
ցը վրայ անշուշտ անմեղ արիւնին
պարտքը պիտի բերէք. վասն զի
ճշմարտապէս Տէրը զիս ձեզի ղըր-
կեց, որ աս բոլոր խօսքերը ձեր ա-
կանջներուն զրուցեմ ։
16 Ան ատենը իշխանները ու բոլոր
ժողովուրդը՝ քահանաներուն ու
մարգարէներուն ըսին. Աս մարդը
մեռնելու արժանի չէ. վասն զի
մեր Տէր Աստուծոյն անունովը մեզի
ծ Գոր. Ե. 34, 35
17 խօսեր է ։ ծ Ու երկրին ծերերէն
քանի մը մարդիկ ելան, և ժողո-
վուրդին բոլոր ժողովքին խօսեցան՝
18 ըսելով. Յուդայի Եզեկիա թա-
կ Միք. Ա. 1
Իրր 710
գաւորին օրերը՝ կ Մորասթացի Մի-
քիան մարգարէութիւն ըրաւ. և
բոլոր Յուդայի ժողովուրդին խօսե-
ցաւ՝ ու ըսաւ. Զօրաց Տէրը այս-
հ Միք. Գ. 12
պէս կ'ըսէ. հ Սիօնը ագարակի պէս
պիտի հերկուի, ու Երուսաղէմը
աւերակներու դէզեր, ու Տէրոջը
տանը լեռը՝ անտառի բարձր տե-
19 ղերու պէս պիտի ըլլայ ։ Միթէ
Յուդայի Եզեկիա թագաւորը, ու
բոլոր Յուդան զանիկայ մեռցու-

Ն․ Ք․ ԳՔ․ Իրր 609

ցի՞ն. չէ՞ որ անիկայ ն Տէրոջմէն
ն Բ Մն. ԼԲ. 26
վախնալով՝ Տէրոջը առջեւը աղօթք
ըրաւ, և ղ Տէրը անոնց վրայով ը-
ղ Ել. ԼԲ. 14, Բ Թագ. ԻԴ. 16
սած չարիքին համար զղջաց. ու-
րեմն ց մենք մեծ չարիք մը ըրած
ց Գոր. Ե. 39
կ'ըլլանք մեր անձերուն ։
20 Ու նաև Կարիաթարիմէն Սեմա-
յիայի որդի Ուրիա անունով մարդ
մը կար, որ Տէրոջը անունովը մար-
գարէութիւն կ'ընէր. և անիկայ
աս քաղաքին վրայ ու աս երկրին
վրայ՝ Երեմիային բոլոր խօսքերուն
21 պէս մարգարէացաւ ։ Ու երբոր
Յովակիմ թագաւորը, ու անոր
բոլոր զօրաւոր մարդիկը, ու բոլոր
իշխանները անոր խօսքերը լսեցին,
թագաւորը ուզեց որ զանիկայ
մեռցընէ. բայց Ուրիան ասոր բանը
լսելով՝ վախցաւ, ու փախաւ Ե-
22 գիպտոս գնաց ։ Եւ Յովակիմ
թագաւորը մարդիկներ ղրկեց Ե-
գիպտոս. Աքոբորի որդին Եղնա-
թանը, ու անոր հետ քանի մը
23 մարդիկ ղրկեց Եգիպտոս. Եւ ա-
նոնք Ուրիան Եգիպտոսէն հանե-
ցին, ու զանիկայ Յովակիմ թա-
գաւորին բերին. ան ալ զանիկայ
սրով զարկաւ, ու անոր մարմինը
ժողովուրդին որդւոցը գերեզման-
24 ները նետեց ։ Բայց մ Սափանի որ-
մ Դ Թագ. ԻԲ. 12, 14, Գլ. ԼԹ. 14
դւոյն Աքիկամին ձեռքը Երեմիա-
յին հետն էր, որ չըլլայ թէ անի-
կայ ժողովուրդին ձեռքը մատնուե-
լով՝ մեռցուի ։

## ԳԼ. ԻԷ

1 Երեմիա՝ կապերու և լուծերու օրինակով կը մարգարէանայ թէ մերձակայ թագաւորները Նաբուգոդոնոսորէն պիտի յաղթուին. 8 կը յորդորէ զանոնք որ անոր հնազանդին՝ և սուտ մարգարէներուն չհաւատան. 12 Նոյնպէս ալ Սեդեկիան կը յորդորէ. 19 կը նախաձայնէ թէ մնացած անօթները Բաբելոն պիտի տարուին, ու հոն պիտի մնան մինչև այցելութեան օրը ։

Իրր 598

1 Յուդայի թագաւորին Յովսիայի
որդւոյն *Սեդեկիային թագա-
ւորութեանը սկիզբը՝ Տէրոջը կող-
մանէ Երեմիային աս խօսքը եղաւ,
ըսելով.
2 Տէրը ինծի այսպէս ըսաւ. Քեզի
կապեր ու լուծեր շինէ, ու ա զա-
3 նոնք պարանոցիդ վրայ դիր. Եւ
զանոնք Երուսաղէմ՝ Յուդայի Սե-
դեկիա թագաւորին եկող դեսպան-
ներուն ձեռքովը Եդովմի թագա-
ւորին, ու Մովաբի թագաւորին,
ու Ամմոնի որդւոցը թագաւորին,
և Տիւրոսի թագաւորին, ու Սիդո-
4 նի թագաւորին ղրկէ ։ Եւ անոնց
պատուէր տուր իրենց տէրերուն
համար՝ ու ըսէ. Զօրաց Տէրը
Իսրայէլին Աստուածը այսպէս կ'ը-
սէ. Ձեր տէրերուն ասանկ ըսէք.

* Եբրայական օրինակներուն մէջ Յովակիմին կայ. բայց պէտք է Հմր 3, 12, 19, 20, Գլ. ԻԸ. 1
ա Գլ. ԻԸ. 10, 12, Տես Եզեկ. Դ. 1, Ժր. 3, Իդ. 3, 35

Ն · Ք · ՂՖ ·
Իբր 598

բ Սաղ. ճժե. 15 ։ Ճիգ. 6 ։ Եա . խե . 12 ։
գ Սաղ. ճժե. 16 ։ Դան . դ . 17 ։ 25 ։ 32 ։
դ Գլ . իը . 14 ։
ե Գլ. իե . 9 ։ խգ . 10 ։ Եզեկ . իթ . 18 ։ 20 ։
զ Գլ. իը . 14 ։ Դան . բ . 38 ։
է բ Մն . լզ . 20 ։
ը Գլ . իե . 12 . ծ . 27 ։ Դան . ե . 26 ։
թ Գլ. իե. 14 ։
ժ Հմր 14 ։
598
է Գլ. իը . 1 ։ լը . 17 ։
ւ Եզեկ . ժը . 31 ։
ի Գլ. ժդ . 14 ։ իդ . 21 ։ իթ . 8 . 9 ։

5 բԵս իմ մեծ զօրութեամբս ու եր-
կընցած բազուկովս՝ երկիրը, մար-
դը ու երկրի երեսին վրայ եղող՝
անասունները ստեղծեցի, և գզա-
նիկայ կու տամ, որուն որ իմ աչ-
քիս առջևը հաճոյ կ'երևնայ դուր ։
6 դԵւ հիմա աս բոլոր երկիրները՝ ես
եիմ ծառայիս՝ Բաբելոնի Նաբու-
գոդոնոսոր թագաւորին ձեռքը
կու տամ, ու Նդաշտի գազաններն
ալ անոր կու տամ, որ անոր ծա-
7 ռայութիւն ընեն ։ Եւ էբոլոր
ազգերը ծառայութիւն պիտի ընեն
անոր, ու անոր որդւոյն, ու անոր
որդիին որդւոյն, ըմինչև որ անոր
երկրին ժամանակն ալ հասնի, ու
Բզանիկայ ալ շատ ազգեր ու մեծ
թագաւորներ իրենց ծառայ ընեն ։
8 Եւ ան ազգը կամ թագաւորու-
թիւնը որ Բաբելոնի Նաբուգոդո-
նոսոր թագաւորին ծառայութիւն
չընեն, ու իր պարանոցը Բաբելոնի
թագաւորին լուծին տակը չդնեն,
ան ազգին՝ սրով, սովով ու ժան-
տախտով այցելութիւն պիտի ը-
նեմ՝ կ'ըսէ Տէրը, մինչև որ զանոնք
անոր ձեռքովը հատցընեմ ։
9 Եւ դուք մտիկ մի՛ ընէք ձեր
մարգարէներուն, բաղդ նայողնե-
րուն, երազատեսներուն, գուշա-
կողներուն, ու կախարդներուն, ո-
րոնք ձեզի կը խօսին՝ ըսելով .
Բաբելոնի թագաւորին ծառայ
10 պիտի չըլլաք . Քանզի ժանոնք
ձեզի սուտ մարգարէութիւն կ'ը-
նեն . որպէս զի ձեր երկրին վը-
րայէն ձեզ հեռացընեն, ու ես ձեզ
11 վռընտեմ, ու կորսուիք ։ Բայց
իր պարանոցը Բաբելոնի թագա-
ւորին լուծին տակը դնող՝ և անոր
ծառայութիւն ընող ազգը՝ ան-
շուշտ իր երկրին վրայ հանգիստ
պիտի թողում, կ'ըսէ Տէրը, ու
պիտի մշակէ զանիկայ, ու անոր
մէջը պիտի բնակի ։
12 էՅուդայի Սեդեկիա թագաւորին
ալ աս բոլոր խօսքերուն համեմատ
զրուցեցի, ու ըսի . Ձեր պարա-
նոցը Բաբելոնի թագաւորին լու-
ծին տակը դրէք՝ և անոր ու անոր
ժողովուրդին ծառայութիւն ը-
13 րէք, որ ապրիք ։ ւԻնչու համար
դուն ու քու ժողովուրդդ սրով,
սովով ու ժանտախտով մեռնիք,
ինչպէս որ Տէրը՝ Բաբելոնի թագա-
ւորին ծառայութիւն չընող ազգին
14 համար խօսեցաւ ։ Եւ դուք մտիկ
մի՛ ընէք ան մարգարէներուն խօս-
քերը, որոնք ձեզի կը խօսին՝ ըսե-
լով . Բաբելոնի թագաւորին ծա-
ռայ պիտի չըլլաք . վասն զի անոնք
ձեզի իսուտ մարգարէութիւն կ'ը-
15 նեն . Քանզի ես զանոնք չխրկեցի՝

Ն · Ք · ՂՖ ·
Իբր 598

թ բ Մն . լզ . 7 ։ 10 ։ Գլ . իը . 3 ։ Դան . ա . 2 ։
լ դ Թագ . իե . 13 ։ Ա Գլ . ծբ . 17 ։ 20 ։ 21 ։
հ դ Թագ . իդ . 14 ։ 15 ։ Գլ . իդ . 1 ։
ձ դ Թագ . իե . 13 ։ բ Մն . լզ . 18 ։
ղ բ Մն . լզ . 21 ։ Գլ . իթ . 10 ։ լբ . 5 ։
ճ Եզր . ա . 7 ։ է . 19 ։

կ'ըսէ Տէրը . հապա անոնք իմ ա-
նունովս սուտ մարգարէութիւն
կ'ընեն, որպէս զի ես ձեզ վռըն-
տեմ . և դուք՝ ու ձեզի մարգարէ-
ութիւն ընող մարգարէները կոր-
սուիք ։
16 Ու ես քահանաներուն և աս
բոլոր ժողովուրդին զրուցեցի, ու
ըսի . Տէրը այսպէս կ'ըսէ . Ձեր
մարգարէներուն խօսքերը մտիկ մի՛
ընէք՝ որոնք ձեզի մարգարէութիւն
կ'ընեն՝ ըսելով . Ահա Տէրոջը տա-
նը թանօթները մօտերս Բաբելոնէն
ետ պիտի բերուին . քանզի անոնք
սուտ մարգարէութիւն կ'ընեն ձե-
17 զի . Անոնց մտիկ մի՛ ընէք . Բաբե-
լոնի թագաւորին ծառայեցէք, որ
ապրիք . Ինչու աս քաղաքը աւե-
18 րակ ըլլայ ։ Բայց թէ որ անոնք
մարգարէներ են, ու թէ որ անոնց
քովը Տէրոջը խօսքը կայ, թող հի-
մա զօրաց Տէրոջը աղօթք ընեն, որ
Տէրոջը տանը մէջ, և Յուդայի
թագաւորին տանը մէջ, ու Երու-
սաղեմի մէջ մնացած անօթները
19 Բաբելոն չերթան ։ Վասն զի զօ-
րաց Տէրը այսպէս կ'ըսէ լսիւնե-
րուն, ու ծովին, և մեքենովթնե-
րուն, ու աս քաղաքիս մէջ մնացած
20 անօթներուն վրայով, Որոնք Բա-
բելոնի Նաբուգոդոնոսոր թագա-
ւորը չառաւ, երբոր հՅուդայի
թագաւորը Յովակիմի որդին Յե-
քոնիան, և Յուդայի ու Երուսա-
ղեմի բոլոր ազնուականները Երու-
սաղեմէն Բաբելոն գերի տարաւ .
21 Յիրաւի զօրաց Տէրը՝ Իսրայէլին
Աստուածը այսպէս կ'ըսէ Տէրոջը
տանը մէջ, և Յուդայի թագաւո-
րին տանը մէջ, ու Երուսաղեմի
մէջ մնացած անօթներուն համար .
22 Անոնք ձԲաբելոն պիտի տարուին,
և հոն պիտի մնան ղմինչև ան օրը՝
որ անոնց այցելութիւն ընեմ, կ'ը-
սէ Տէրը . ետքը ճզանոնք պիտի
հանեմ, ու աս տեղս պիտի դարձը-
նեմ ։

## ԳԼ . ԻԸ

1 Անանիա սուտ մարգարէութիւնով կ'իմացընէ թէ տաճարին անօթները ու Յեքոնիան պիտի դառնան ։ 5 Երեմիա՝ բաղձալով որ ան մարգարէութիւնը ճշմարիտ ըլլայ, կը ցուցընէ թէ դիպուածը պիտի յայտնէ թէ ճշմարիտ մարգարէները որոնք են ։ 10 Անանիա կը կոտրէ Երեմիային լուծը ։ 12 Երեմիա երկաթէ լուծի վրայով կը խօսի ։ 15 ու կը նախաձայնէ Անանիային մահը ։

Իբր 596
ա Գլ. իէ. 1 ։

1 Ու եղաւ որ աՆոյն տարին՝ Յուդայի
թագաւորին Սեդեկիային թա-
գաւորութեանը սկիզբը՝ չորրորդ
տարւոյն հինգերորդ ամիսը՝ Գա-
բաւոնէն եղող Ազուրի որդին Անա-
նիա մարգարէն՝ Տէրոջը տանը մէջ
քահանաներուն ու բոլոր ժողո-

Ն . Ք Յզ . Իրր 596

վուրդին առջեւ ինծի խօսեցաւ՝ ու
2 ըսաւ . Զօրաց Տէրը՝ Իսրայէլին
Աստուածը այսպէս կը խօսի՝ ու
կ'ըսէ . Բաբելոնի թագաւորին

Բ Գւ . իե . 12 . Գ Գւ . իե . 10 .

3 լուծը կոտրեցի . Մինչեւ երկու
տարի՝ Բաբելոնի Նաբուգոդոնոսոր
թագաւորին աս տեղէն առած , ու
Բաբելոն տարած Տէրոջը տանը
բոլոր անօթները աս տեղս պիտի
4 դարձրնեմ . Եւ Յուդայի թագա-
ւորը Յովակիմի որդին Յեքո-
նիան , ու Բաբելոն գացած Յու-
դայի բոլոր գերիները աս տեղս պի-
տի դարձրնեմ՝ կ'ըսէ Տէրը . վասն
զի Բաբելոնի թագաւորին լուծը
պիտի կոտրեմ ։
5 Ու Երեմիա մարգարէն՝ Տէրոջը
տանը մէջ կայնող քահանաներուն
ու բոլոր ժողովուրդին աչքին առ-
ջեւը՝ Անանիա մարգարէին խօսե-
6 ցաւ . Ու Երեմիա մարգարէն ըսաւ .

Դ Գ Թագ . Ա . 36 .

Ամէն . Տէրը այնպէս ընէ . Տէրը
քու մարգարէացած խօսքերդ հաս-
տատէ , ու Տէրոջը տանը անօթները
ու բոլոր գերիները Բաբելոնէն աս
7 տեղս դարձրնէ ։ Բայց հիմա քու
ականջներուդ եւ բոլոր ժողովուր-
դին ականջներուն աս իմ ըսելու
8 խօսքս մտիկ ըրէ . Ինծմէ առաջ ու
քեզմէ առաջ՝ սկիզբէն 'ի վեր եղող
մարգարէները՝ շատ երկիրներու
դէմ ու մեծ թագաւորութեանց
դէմ՝ պատերազմի , չարիքի ու
ժանտախտի վրայով մարգարէա-

Ե Բ Օր . Ժը . 22 .

9 ցան ։ Երբոր մէկ մարգարէ մը
խաղաղութիւն կը մարգարէանայ ,
ու ան մարգարէին խօսքը կը կա-
տարուի , ան ատենը կը հասկցուի
որ անիկայ ճշմարտապէս Տէրոջմէ
խրկուած մարգարէ մըն է ։
10 Ան ատենը Անանիա մարգարէն
Երեմիա մարգարէին պարանոցէն

Զ Գւ . իէ . 2 .

լուծը առաւ , ու զանիկայ կոտ-
11 րեց ։ Եւ Անանիա բոլոր ժողովուր-
դին աչքին առջեւը խօսեցաւ ու ը-
սաւ . Տէրը այսպէս կ'ըսէ . Մինչեւ
երկու տարի՝ Բաբելոնի Նաբուգո-

Է Գւ . իե . 7 .

դոնոսոր թագաւորին լուծը՝ ա-
մէն ազգերուն պարանոցին վրայէն
այսպէս պիտի կոտրեմ , ու Երեմիա
մարգարէն իր ճամբան գնաց ։
12 Եւ Անանիա մարգարէն՝ Երեմիա
մարգարէին պարանոցին վրայէն
լուծը կոտրելէն ետքը՝ Տէրոջը խօս-
13 քը Երեմիային եղաւ՝ ըսելով . Գնա՛
Անանիային խօսէ՛ , ու ըսէ՛ . Տէրը
այսպէս կ'ըսէ . Դուն փայտէ լու-
ծերը կոտրեցիր , սակայն անոնց
տեղը երկաթէ լուծեր պիտի շի-
14 նես ։ Քանզի զօրաց Տէրը՝ Իսրայէ-

Ը Բ Օր . ԻԸ : 48 . Գւ . իէ : 4 , 7 .

լին Աստուածը այսպէս կ'ըսէ . Աս
բոլոր ազգերուն պարանոցին վրայ
երկաթէ լուծ դրի , որ Բաբելոնի

Ն . Ք . Յզ . Իրր 596

Նաբուգոդոնոսոր թագաւորին ծա-
ռայութիւն ընեն ։ Եւ անոր պիտի
ծառայեն . Ու դաշտի գազաններն
ալ անոր տուի ։

Ը Գւ . իե . 6 .

15 Ու Երեմիա մարգարէն՝ Անանիա
մարգարէին ըսաւ . Հիմա լսէ՛ ով
Անանիա , Տէրը քեզ խրկած չէ , ու
դուն աս ժողովուրդը սուտութեան

Թ Գւ . ԻԹ . 31 . Եզեկ . Ժգ . 22 .

16 յուսացուցիր ։ Անոր համար Տէրը
այսպէս կ'ըսէ . Ահա ես քեզ երկրի
երեսին վրայէն պիտի վռնտեմ .
դուն աս տարի պիտի մեռնիս ,
վասն զի Տէրոջը դէմ ապստամ-

Ժ Բ Օր . Ժգ . 5 . Գւ . ԻԹ . 32 .

17 բութիւն խօսեցար ։ Եւ Անանիա
մարգարէն ան տարւոյն եօթներորդ
ամսուն մէջ մեռաւ ։

## ԳԼ . ԻԹ

1 Երեմիա Բաբելոնի մէջ եղող գերիներուն նամակ կը խրկէ՝ յորդորելով զանոնք որ հանդարտ ըլլան , 8 եւ իրենց մարգարէներուն երազներուն չհաւատան , 10 եւ կ'իմացընէ թէ եօթանասուն տարիէն ետեւ Աստուծոյ խնամքովը պիտի դառնան . 15 կը նախածայնէ մնացորդին կործանումը իրենց անհնազանդութեանը համար . 20 կը ցուցընէ երկու սուտ մարգարէներուն՝ Աքաաբին ու Սեդեկիային երկիւղալի վախճանը ։ 24 Սեմայիա նամակ մը կը գրէ Երեմիային դէմ ։ 30 Երեմիա անոր աղէտալի վախճանը կը ստորագրէ ։

Իրր 599

1 Ասոնք են ան նամակին խօսքերը ,
որ Երեմիա մարգարէն Երուսա-
ղէմէն խրկեց գերութեանը մնացած
ծերերուն , քահանաներուն , եւ մար-
գարէներուն , ու բոլոր ժողովուր-
դին , որոնք Նաբուգոդոնոսոր Ե-
րուսաղէմէն Բաբելոն քշեր էր ,

Ա Դ Թագ . Իդ . 12 , Ա . Գւ . իբ . 26 . իգ . 4 .

2 Յեքոնիա թագաւորը , եւ թագու-
հին , ու պալատականները , Յու-
դայի ու Երուսաղէմի իշխանները ,
ու հիւսները , եւ դարբինները Ե-
3 րուսաղէմէն ելլելէն ետքը , Սափա-
նի որդւոյն Եղեասային , ու Քեղ-
կիայի որդւոյն Գամարիային ձեռ-
քովը , (որ զանոնք Յուդայի թա-
գաւորը Սեդեկիան՝ Բաբելոնի Նա-
բուգոդոնոսոր թագաւորին Բաբե-
լոն խրկեր էր ,) ըսելով .
4 Այսպէս կ'ըսէ զօրաց Տէրը՝ Իս-
րայէլին Աստուածը բոլոր գերինե-
րուդ՝ որոնք Երուսաղէմէն Բաբե-

Բ Հմր 28 .

5 լոն քշել տուեր եմ . Տուներ շի-
նեցէք , ու բնակեցէ՛ք . պարտէզ-
ներ տնկեցէք , ու անոնց պտուղը
6 կերէ՛ք . Կնիկներ առէք , եւ տղաք-
ներ ու աղջիկներ ունեցէք . ու ձեր
տղոցը կնիկներ առէք , եւ ձեր աղ-
ջիկները էրիկներու տուէք , որ տը-
ղաքներ ու աղջիկներ ծնանին . եւ
հոն բազմացէ՛ք , ու չքիչնաք ։
7 Ու ան քաղաքին խաղաղութիւնը
փնտռեցէ՛ք , ուր որ ձեզ քշել

Գ Եզր . Զ . 10 . Ա Տիմ . Բ . 2 .

տուեր եմ , եւ անոր համար Տէ-
րոջը աղօթք ըրէք . վասն զի անոր
խաղաղութիւնովը ձեզի խաղա-

8 ղութիւն կ'ըլլայ ։ Քանզի զօրաց
Տէրը՝ Իսրայէլին Աստուածը այսպէս կ'ըսէ․ Ձեր մէջը եղող ձեր
մարգարէները, ու ձեր բաղդ նայողները ձեզ չխաբեն․ և ձեր
տեսնել տուած երազներուն մտիկ
9 մի՛ ընէք ։ Վասն զի անոնք իմ
անունովս սուտ մարգարէութիւններ կ'ընեն ձեզի․ զանոնք ես
10 չխրկեցի՝ կ'ըսէ Տէրը ։ Քանզի
Տէրը այսպէս կ'ըսէ․ Երբոր Բաբիլոնին եօթանասուն տարին
լմըննայ, ձեզի այցելութիւն պիտի
ընեմ, և ձեզ աս տեղս դարձընելով՝ իմ բարի խոստմունքս ձեր
11 վրայ պիտի կատարեմ ։ Քանզի
ես՝ ձեր վրայով խորհած խորհուրդներս գիտեմ՝ կ'ըսէ Տէրը․
անոնք *ձեր յուսացած վախճանը"
ձեզի տալու համար՝ խաղաղութեան խորհուրդներ են՝ և ոչ թէ
12 չարիքի ։ Ու դուք ինծի պիտի
կանչէք, և պիտի երթաք՝ ու
ինծի աղօթք պիտի ընէք, և
13 ձեզի պիտի լսեմ ։ Ու զիս պիտի փնտռէք, և պիտի գտնէք․
վասն զի ձեր բոլոր սրտովը պի
14 տի խնդրէք զիս․ Ու ես ձեզի
պիտի գտնուիմ՝ կ'ըսէ Տէրը, և
ձեր գերութիւնը ետ պիտի դարձընեմ․ ու ձեզ պիտի ժողվեմ
բոլոր ազգերէն, ու ան բոլոր տեղերէն՝ ուր որ ձեզ քշեր էի, կ'ըսէ
Տէրը, և ձեզ պիտի դարձընեմ
ան տեղը՝ ուսկից որ ձեզ գերու
15 թեան քշել տուի ։ (Վասն զի
դուք ըսիք թէ՝ Տէրը մեզի Բաբիլոնի մէջ մարգարէներ հանեց ։)
16 Քանզի Դաւիթի աթոռին վրայ
նստող թագաւորին համար, ու
աս քաղաքիս մէջը բնակող բոլոր
ժողովուրդին համար՝ ձեզի հետ
գերութեան չգացող եղբայրներնուդ համար՝ Տէրը այսպէս կ'ըսէ․
17 Զօրաց Տէրը այսպէս կ'ըսէ․ Ահա
ես անոնց մէջ պիտի խրկեմ սուրրը, սովը ու ժանտախտը, և զանոնք խիստ գէշ թուզերուն պէս
պիտի ընեմ, որոնք գէշութենէն
18 չեն ուտուիր․ Ու զանոնք սրով,
սովով ու ժանտախտով պիտի հալածեմ, և զանոնք նեղութիւն
կրելու պիտի մատնեմ երկրիս բոլոր
թագաւորութիւններուն մէջ․ անոնք նզովքի, զարմանքի, սուլելու, ու նախատինքի առակ
պիտի ըլլան ան բոլոր ազգերուն մէջը՝
19 ուր որ զանոնք պիտի քշեմ․ Որովհետև իմ խօսքերս մտիկ չըրին՝
կ'ըսէ Տէրը, երբոր իմ ծառաներս մարգարէները անոնց խրկեցի,
կանուխ ելլելով ու խրկելով․ ու
դուք մտիկ չըրիք՝ կ'ըսէ Տէրը ։

20 Ուրեմն Տէրոջը խօսքը մտիկ ըրէք՝
ով դուք բոլոր գերիներդ՝ որ ես
Երուսաղեմէն Բաբիլոն խրկեցի ։
21 Իմ անունովս ձեզի սուտ մարգարէութիւն ընող Կողիայի որդւոյն
Աքաաբին վրայով, ու Մաասիայի
որդւոյն Սեդեկիային վրայով՝ զօրաց Տէրը՝ Իսրայէլին Աստուածը
այսպէս կ'ըսէ․ Ահա ես զանոնք
Բաբիլոնի Նաբուգոդոնոսոր թագաւորին ձեռքը պիտի տամ․ ու
զանոնք ձեր աչքերուն առջևը պի
22 տի զարնէ․ Եւ Բաբիլոն եղող
Յուդայի բոլոր գերիներուն մէջ՝
անոնց պատահածէն անէծք պիտի առնուի՝ ըսելով․ Տէրը քեզ՝
Բաբիլոնի թագաւորին կրակի
մէջ խորոված Սեդեկիային ու Ա
23 քաաբին պէս ընէ ։ Վասն զի Իսրայէլի մէջ անզգամութիւն գործեցին, և իրենց ընկերներուն կանանցը հետ շնութիւն ըրին, ու իմ
անունովս սուտ խօսքեր խօսեցան,
որ ես անոնց չհրամայեցի․ բայց ես
գիտեմ, ու վկայ եմ՝ կ'ըսէ Տէրը ։
24 Ու Նեհելամացի Սեմայիային խօ
25 սիս ու ըսես․ Զօրաց Տէրը՝ Իսրայէլին Աստուածը այսպէս կը խօսի՝ ու կ'ըսէ․ Որովհետև դուն
Երուսաղէմ եղող բոլոր ժողովուրդին, և Մաասիայի որդւոյն Սոփոնիա քահանային, ու բոլոր քահանաներուն՝ քու անունովդ թուղ
26 թեր խրկեցիր, ըսելով․ Տէրը
քեզ Յովիադա քահանային տեղը
քահանայ դրաւ, որ Տէրոջը տանը
վերակացու ըլլաս, ու ամէն խելացնոր մարդը՝ որ զինքը մարգարէ
կը ձևացընէ, բանտը ու երկաթը
27 դնես ։ Եւ հիմա ինչո՞ւ համար
ձեզի մարգարէութիւն ընող" Անաթովթացի Երեմիան չյանդիմա
28 նեցիր․ Վասն զի անիկայ մեզի այսպէս նամակ խրկեց Բաբիլոն, ու
ըսաւ․ Աս գերութիւնը պիտի երկըննայ․ տուներ շինեցէք, ու
բնակեցէք․ պարտէզներ տնկեցէք,
29 և անոնց պտուղը կերէք ։ Ու
Սոփոնիա քահանան՝ աս թուղթը
Երեմիա մարգարէին ականջներուն
30 կարդաց ։ Եւ Տէրոջը խօսքը Ե
31 րեմիային եղաւ՝ ըսելով․ Բոլոր
գերիներուն լուր խրկէ, ու ըսէ․
Նեհելամացի Սեմայիային համար
Տէրը այսպէս կ'ըսէ․ Որովհետև
Սեմայիան ձեզի մարգարէութիւն
ըրաւ, թէպէտև զանիկայ ես չըխրկեցի, ու ձեզ ստութեան յու
32 սացուց, Անոր համար Տէրը այսպէս կ'ըսէ․ Ահա ես Նեհելամացի
Սեմայիային ու անոր սերունդին
այցելութիւն պիտի ընեմ․ աս
ժողովուրդին մէջը բնակող անոր

Ն · Ք · ԶՔ · իբր 606

[ղ] Գլ · իը · 16 ։

մէկ մարդը պիտի չմնայ , և իմ
ժողովուրդիս ընելու բարիքս անի-
կայ պիտի չտեսնէ , կ՚ըսէ Տէրը ·
[ղ] վասն զի Տէրոջը դէմ ապստամ-
բութիւն խօսեցաւ ։

## ԳԼ · Լ

1 Աստուած կը ցուցնէ Երեմիային թէ Հրէայք պիտի դառնան . 4 և թէ իրենց թշուառութենէն ետև պիտի ազատին . 10 Յակոբը կը մխիթարէ ։ 18 Անոնց ուրախալի գերեդարձութիւնը ։ 23 Չարերուն վրայ հասնելու բարկութիւնը ։

1 Տէրոջը կողմանէ Երեմիային եղած
2 խօսքն է՝ որ ըսաւ . Իսրայէլին
Տէր Աստուածը այսպէս կը խօսի
ու կ՚ըսէ · Բոլոր քեզի ըսած խօս-
3 քերս գիրքի մը մէջ գրէ · Քանզի
ահա օրեր կու գան՝ կ՚ըսէ Տէրը ,
որ [ա] իմ ժողովուրդիս Իսրայէլին և
Յուդային գերութիւնը պիտի դար-
ձընեմ՝ կ՚ըսէ Տէրը , ու [բ] զանոնք
իրենց հայրերուն տուած երկիրս
պիտի դարձընեմ , ու զանիկայ պի-
տի ժառանգեն ։
4 Եւ Իսրայէլին համար ու Յու-
դային համար՝ Տէրոջը ըսած խօս-
5 քերը ասոնք են · Տէրը այսպէս
կ՚ըսէ · Սոսկալի ձայն լսեցինք ·
վախ կայ , ու խաղաղութիւն չը-
6 կայ ։ Հիմա հարցուցէ՛ք ու տե-
սէ՛ք , թէ արդեօք էրիկ մար-
դը զաւակ կը ծնանի՞ · ինչու
համար ամէն կտրիճը՝ [գ] ծննդական
կնոջ պէս ձեռքերը մէջքը դրած ,
ու բոլոր երեսները դեղնած կը
7 տեսնեմ ։ [դ] Վա՜յ , քանզի անիկայ
մեծ օր է · [ե] անոր պէս չկայ · ու ա-
նիկայ Յակոբին նեղութեան ժա-
մանակ պիտի ըլլայ · բայց անկէ
8 պիտի ազատի · Վասն զի այն օրը՝
կ՚ըսէ զօրաց Տէրը , անոր լուծը
քու պարանոցէդ պիտի կոտրեմ , և
քու կապերդ պիտի փրցընեմ · ու
զանիկայ մէյմըն ալ օտարները պի-
9 տի չծառայեցընեն · Հապա անոնք՝
իրենց Տէր Աստուծոյն , ու իրենց
[զ] Դաւիթ թագաւորին ծառայու-
թիւն պիտի ընեն , որն որ ես [է] պի-
10 տի հանեմ անոնց ։ Բայց դուն
ով իմ ծառաս Յակոբ՝ [ը] մի՛ վախ-
նար՝ կ՚ըսէ Տէրը , ու ով Իսրայէլ՝
մի՛ զարհուրիր · քանզի ահա ես
քեզ հեռուէն՝ և քու սերունդդ
[թ] իրենց գերութեանը երկրէն պիտի
ազատեմ · ու Յակոբը պիտի դառ-
նայ , և հանդարտ ու հանգիստ
պիտի ըլլայ · և [ժ] ոչինչ վախցընող
11 պիտի չըլլայ · Վասն զի ես՝ քեզ ա-
զատելու համար քեզի հետ եմ , կ՚ը-
սէ Տէրը · [ի] քանզի պիտի սպառեմ
այն բոլոր ազգերը՝ որոնց մէջ քեզ
ցրուեցի · [ի] բայց քեզ պիտի չսպա-
ռեմ · հապա քեզ [լ] չափաւորու-

[ա] Հմր 18 ։ Գլ · լբ · 44 ։ Եզեկ · լթ · 25 · Ամով · թ · 14 , 15 ։
[բ] Գլ · ժզ · 15 ։
[գ] Գլ · դ · 31 ։ զ · 24 ։
[դ] Յովէլ · բ · 11 , 31 ։ Ամով · ե · 18 ։ Սոփ · ա · 14 , ևն ։
[ե] Դան · ժբ · 1 ։
[զ] Ես · ծե · 3 , 4 ։ Եզեկ · լդ · 23 ։ լէ · 24 ։ Ովս · գ · 5 ։
[է] Ղու · ա · 69 ։ Գործ · բ · 30 ։ ժգ · 23 ։
[ը] Ես · խա · 13 ։ խդ · 5 ։ խդ · 2 ։ Գլ · խզ · 27 , 28 ։
[թ] Գլ · գ · 18 ։
[ժ] Ամով · թ · 8 ։
[ի] Գլ · դ · 27 ։
[լ] Սաղ · զ · 1 ։ Ես · իէ · 8 ։ Գլ · ժ · 24 ։ խզ · 28 ։

թեամբ պիտի խրատեմ , ու քեզ
բոլորովին անմեղ պիտի չհանեմ ·
12 Վասն զի Տէրը այսպէս կ՚ըսէ ·
[խ] Քու հարուածքդ անբժշկելի է , ու
13 վէրքդ անդարմանելի է · Զանիկայ
պատելու համար՝ քու դատաստանդ-
տեսնող մը չկայ · [ծ] Քեզի համար
14 դեղ ու սպեղանի չկայ ։ [կ] Քու բո-
լոր սիրականներդ քեզ մոռցան ·
քեզ չեն փնտռեր · վասն զի քեզ
[հ] թշնամիի հարուածքով՝ [ձ] անգութ
մէկու մը պատիժովը զարկի քու
անօրէնութիւններուդ շատու-
թեանը համար · [ղ] Քու մեղ-
15 քերդ շատցան ։ [ճ] Քու բեկմանդ
համար ինչու կ՚աղաղակես · քու
ցաւդ անբժշկելի է · աս բաները
քու անօրէնութիւններուդ շատու-
թեանը համար քեզի ըրի · [մ] Անոր
16 համար ամէն անոնք որ քեզ կը կլլեն՝
պիտի կլլուին , և քու բոլոր թշ-
նամիներդ գերութեան պիտի եր-
թան , ու քեզ յափշտակողները
պիտի յափշտակուին · ու քեզ կո-
ղոպտողներուն ամէնը կողոպտու-
17 լու պիտի մատնեմ · [յ] Վասն զի քու
վէրքդ պիտի պատեմ , և քեզ քու
վէրքերէդ պիտի բժշկեմ , կ՚ըսէ
Տէրը · քանզի քեզի՝ Արտաքսուած
կանչեցին · Աս այն Սիօնն է , որ զա-
նիկայ փնտռող չկայ՝ ըսին ։
18 Տէրը այսպէս կ՚ըսէ · Ահա ես
[ն] Յակոբին վրաններուն գերութի-
նը պիտի դարձընեմ , և [շ] անոր բը-
նակարաններուն ողորմութիւն պի-
տի ընեմ · ու քաղաքը իր աւերակ-
ներուն վրայ պիտի շինուի , և պա-
լատը [ո] առջինին պէս պիտի կանգ-
19 նուի ։ Ու [չ] անոնցմէ պիտի ելլէ
գովութիւն՝ և ուրախութիւն ը-
նողներու ձայն · [պ] Ու զանոնք պիտի
շատցընեմ , ու պիտի չպակսին , և
զանոնք պիտի փառաւորեմ , ու
20 պզտիկ պիտի չըլլան ։ Եւ անոնց
տղաքները [ջ] առջինին պէս պիտի
ըլլան · անոնց ժողովքը իմ առջևս
պիտի հաստատուի , ու բոլոր ա-
նոնց նեղութիւն տուողներուն այ-
21 ցելութիւն պիտի ընեմ ։ Եւ ա-
նոնց իշխանը իրենցմէ պիտի ըլլայ ,
[ռ] Ու անոնց վրայ տիրողը իրենց մէ-
ջէն պիտի ելլէ · և [ս] զանիկայ պի-
տի մօտեցընեմ , ու ինծի մօտ պի-
տի ըլլայ · վասն զի ով է անիկայ՝
որ իր սիրտը պատրաստեց ինծի
22 մօտենալու , կ՚ըսէ Տէրը · Եւ դուք
[վ] ինծի ժողովուրդ պիտի ըլլաք , ես
ալ ձեզի Աստուած պիտի ըլլամ ։
23 Ահա [տ] Տէրոջը մրրիկը սրտմտու-
թեամբ ելաւ , անիկայ աւլող մրր-
րիկ է · ամբարիշտներուն գլխուն
24 վրայ պիտի յարձակի ։ Տէրոջը

Ն · Ք · ԶՔ · իբր 606

[խ] Եբր · լզ · 16 ։ Գլ · ժե · 18 ։
[ծ] Գլ · ը · 22 ։
[կ] Ողբ · ա · 2 ։
[հ] Յոբ · ժգ · 24 ։ ժզ · 9 ։ ժթ · 11 ։
[ձ] Յոբ · լ · 21 ։
[ղ] Գլ · ե · 6 ։
[ճ] Գլ · ժե · 18 ։
[մ] Ել · իգ · 22 ։ Ես · լգ · 1 ։ Խաղ · 11 ։ Գլ · ժ · 25 ։
[յ] Գլ · լգ · 6 ։
[ն] Հմր 3 ։ Գլ · լգ · 7 , 11 ։
[շ] Սաղ · ճբ · 13 ։
[ո] Եբր · իր սովորութեանը պէս
[չ] Ես · լե · 10 ։ ծա · 11 ։ Գլ · լա · 4 , 12 ։ 13 ։ լգ · 10 ։ 11 ։
[պ] Զաք · ժ · 8 ։
[ջ] Ես · ա · 26 ։
[ռ] Ծնն · խթ · 10 ։
[ս] Թուոց · ժզ · 5 ։
[վ] Գլ · իդ · 7 ։ լա · 1 , 33 ։ լբ · 38 ։ Եզեկ · ժա · 20 ։ լզ · 28 ։ լէ · 27 ։
[տ] Գլ · իգ · 19 , 20 ։ իե · 32 ։

Ն. Ք. Ք. իրր 606

սաստիկ բարկութիւնը ետ պիտի
չդառնայ, մինչև որ իր սրտին խոր-
հուրդները չկատարէ ու 'ի գործ չը-
դնէ. ^տ Ետքի օրերը ասիկայ պիտի
հասկընաք ։

տ Ծն. խթ. 1.

## ԳԼ. ԼԱ

1 Իսրայէլին վերադարձութիւնը. 10 անոր հրատարակութիւնը ։ 15 Ռաքէլ որ սուգ կ'ընէր, կը մխիթարուի ։ 18 Եփրեմ ապաշխարելով Աստուծոյ կը դառնայ ։ 22 Քրիստոսի վրայով խոստմունք մը ։ 27 Իր խնամքը եկեղեցիին վրայ. 31 իր նոր ուխտը ։ 35 Եկեղեցիին հաստատութիւնը, 38 և ընդարձակութիւնը ։

1 ^ա Նոյն ատենը՝ կ'ըսէ Տէրը, ^բ Իսրա-
յէլին բոլոր ազգատոհմներուն
Աստուած պիտի ըլլամ, ու անոնք
2 ինծի ժողովուրդ պիտի ըլլան ։ Տէ-
րը այսպէս կ'ըսէ. Սուրէն փախած
ժողովուրդը՝ անապատին մէջ շը-
նորհք գտաւ, երբոր ^գ կ'երթայի
Իսրայէլին հանգստութիւն տալու.
3 Տէրը շատոնցմէ ինծի երևցաւ, ը-
սելով. Քեզ ^դ յաւիտենական սի-
րով սիրեցի, անոր համար * ողոր-
4 մութեամբ դքեզ քաշեցի ։ ^ե Քեզ
նորէն պիտի շինեմ, ու պիտի շի-
նուիս՝ ո՛վ Իսրայէլի կոյսը. Նորէն
^զ քու թմբուկներովդ պիտի զարդա-
րուիս, և ցնծութեամբ պար բըռ-
նողներուն խումբին հետ պիտի ել-
5 լես ։ ^է Նորէն Սամարիայի լեռնե-
րուն վրայ այգիներ պիտի տնկես.
տնկողները պիտի տնկեն, ու անոնց
6 պտուղը պիտի ուտեն ։ Վասն զի
օր պիտի ըլլայ որ՝ Եփրեմի լեռանը
վրայ պահապանները պիտի կանչեն.
^ը Ելէ՛ք, ու մեր Տէր Աստուծոյն՝
դէպ 'ի Սիոն ելլենք ։
7 Քանզի Տէրը այսպէս կ'ըսէ.
^թ Յակոբին համար ուրախութեամբ
երգեցէ՛ք, և ազգաց գլուխին † հա-
մար ցնծացէ՛ք. ձայն տուէ՛ք, օրհ-
նեցէ՛ք, ու ըսէ՛ք. Ո՛վ Տէր՝ քու
ժողովուրդդ՝ Իսրայէլին մնացորդը
8 փրկէ ։ Ահա ես ^ժ զանոնք հիւսիսի
երկրէն պիտի բերեմ. և ^ի զանոնք
երկրի ծայրերէն՝ ու անոնց հետ
կոյրը ու կաղը, յղին ու ծնած կը-
նիկը մէկտեղ պիտի ժողվեմ. մեծ
ժողովք մը հոս պիտի դառնայ ։
9 ^լ Լալով պիտի գան, ու աղաչանք-
ներով զանոնք պիտի բերեմ. ^խ զա-
նոնք ջուրերու վտակներուն քովէն
պիտի պտըտցընեմ, շիտակ ճամ-
բայէն՝ որ անոր մէջը չգայթակղին.
վասն զի Իսրայէլին հայր եղայ. ու
Եփրեմը ^ծ իմ անդրանիկս է ։
10 Ո՛վ ազգեր՝ Տէրոջը խօսքը մտիկ
ըրէք, ու հեռաւոր կղզիներուն
պատմեցէ՛ք, ու ըսէ՛ք. Իսրայէլը
^կ ցրուողը՝ զանիկայ պիտի ժողվէ. և
^հ զանիկայ պիտի պահպանէ, ինչ-

ա Գլ. լ. 24.
բ Գլ. լ. 22.
գ Թուոց. ժ. 33. բՕր. ա. 33. Սաղ. ղե. 11. Ես. կգ. 14.
դ Հռով. ժա. 28. 29.
ե Մաղ. ա. 2.
* Կամ՝ քեզի ողորմութիւն երկնցուցի.
զ Ովս. ժա. 4.
է Գլ. լգ. 7.
ը Ել. ժե. 20. Դատ. ժա. 34. Սաղ. ճխթ. 3.
ը Ես. կբ. 21. Ամով. թ. 14.
թ Ես. բ. 3. Միք. դ. 2.
ժ Ես. ժբ. 5. 6.
† Կամ՝ մէջ
ի Գլ. գ. 12. 18. իգ. 8.
լ Եզեկ. ի. 34. 41. լդ. 13.
խ Սաղ. ճիզ. 5. 6. Գլ. ծ. 4.
ծ Ես. լե. 8. խգ. 19. խթ. 10. 11.
կ Ել. դ. 22.
հ Ես. խ. 11. Եզեկ. լդ. 12. 13. 14.

պէս որ հովիւը իր հօտը ^ձ կը պահպա-
11 նէ ։ Քանզի ^ղ Տէրը փրկեց Յակոբը,
ու զանիկայ ^ճ անկէ զօրաւորին
12 ձեռքէն ազատեց ։ Եւ պիտի գան,
ու ^մ Սիոնին բարձրութեանը վրայ
ուրախութեան ձայն պիտի վերցը-
նեն, և պիտի ցնծան ^յ Տէրոջը բա-
րիքներուն՝ այսինքն ցորենին, ու
գինիին, ու եղին, և հօտերուն,
ու արջառներուն համար. և ա-
նոնց անձերը ^ն ջրուած պարտէզի
պէս պիտի ըլլան, ^շ ու մէյմըն ալ
13 պիտի չնուաղին ։ Ան ատենը կոյսը
պար բռնելով պիտի ուրախանայ.
նաև երիտասարդները և ծերերը
մէկտեղ. վասն զի անոնց սուգը
ուրախութեան պիտի դարձընեմ,
և անոնց տրտմութենէն զանոնք
մխիթարելով՝ պիտի ուրախացը-
14 նեմ ։ Ու քահանաներուն հո-
գիները պարարտութիւնով պիտի
լեցընեմ. և իմ ժողովուրդս իմ
բարիքներովս պիտի կշտանան, կ'ը-
սէ Տէրը ։
15 Տէրը այսպէս կ'ըսէ. ^ո Ռամայի
մէջ ^չ ձայն մը լսուեցաւ, ողբի ու
դառնագին լացի ձայն. Ռաքէլ իր
տղոցը համար կու լար, ու իր տը-
ղոցը համար մխիթարուիլ չէր
ուզեր, վասն զի ^պ անոնք չկային ։
16 Տէրը այսպէս կ'ըսէ. Քու ձայնդ
լալէն, և աչքերդ արցունքէն դադ-
րեցուր. վասն զի քու գործքիդ
համար վարձք կայ, կ'ըսէ Տէրը.
ու ^ջ թշնամիին երկրէն պիտի դառ-
17 նան ։ Եւ քու ապագայ ժամանա-
կիդ համար յոյս կայ, կ'ըսէ Տէրը,
որ ^ռ քու տղաքներդ իրենց սահմանը
դառնան ։
18 Յիրաւի Եփրեմին սուգն ու ողբալը
լսեցի. Զիս խրատեցիր, ու խրա-
տուեցայ լուծի չսորված զուարա-
կի պէս. ^ս զիս դարձուր, որ դառ-
նամ. վասն զի իմ Տէր Աստուածս
19 դուն ես ։ Իրաւցընէ ^տ դառնալէս
ետքը զղջացի. ու կրթուելէս ետքը՝
իմ ազդրիս զարկի. ամչցայ, ու
պատկառեցայ. վասն զի իմ ման-
կութեանս անարգանքը կրեցի ։
20 Միթէ Եփրեմը իմ պատուական
որդի՞ս է, կամ սիրական զաւակ
մըն է. վասն զի քանի որ ես անոր
վրայով կը խօսիմ, շարունակ զա-
նիկայ կը յիշեմ. ^ւ Ասոր պատճա-
ռով իմ աղիքս կը գալարի անոր
համար. ^փ անշուշտ անոր ողորմու-
թիւն պիտի ընեմ, կ'ըսէ Տէրը ։
21 Քեզի կոթողներ կանգնէ. քեզի
սիւներ տնկէ. ^ք սիրտդ մեծ ճամ-
բուն՝ քու գացած շաւիղիդ դիր.
դարձիր ո՛վ Իսրայէլի կոյսը՝ աս
22 քու քաղաքներդ դարձիր ։ Ո՛վ
^օ ապստամբ աղջիկ մինչև ե՞րբ ^ֆ աս-

Ն. Ք. Ք. իրր 606
ղ Ես. իդ. 23. խը. 20.
ճ Ես. խթ. 24. 25.
մ Եզեկ. ժէ. 23. ի. 40.
յ Ովս. գ. 5.
ն Ես. ծը. 11.
շ Ես. լե. 10. կե. 19. Յայտ. իա. 4.
ո Յես. ժը. 25.
չ Մատ. բ. 17. 18.
պ Ծն. խբ. 13.
ջ Հմր 4. 5. Եզր. ա. 5. Ովս. ա. 11.
ս Ողբ. ե. 21.
տ բՕր. լ. 2.
ւ բՕր. լբ. 36. Ես. կգ. 15. Ովս. ժա. 8.
փ Ես. ծէ. 18. Ովս. ժդ. 4.
ք Գլ. ծ. 5.
օ Գլ. գ. 6. 8. 11. 12. 14. 22.
ֆ Գլ. ը. 18. 23. 36.

Ն. Ք. Ղ.Ք. Իրր 606

ա Տես Սաղ. ՃԻԲ. 5-Տ. Եսա. Ա. 26.
բ Զաք. Ը. 3.
գ Գլ. ԼԴ. 12, 13.
դ Եզեկ. ԼԶ. 9, 10, 11. Ովս. Բ. 23.
ե Գլ. Ա. 10. ԺԸ. 7.
զ Գլ. ԽԴ. 27.
է Գլ. ԻԴ. 6.
ը Եզեկ. ԺԸ. 2, 3.
թ Բաղ. Զ. 5, Տ.
ժ Գլ. ԼԲ. 40. ԼԴ. 14. Եզեկ. ԼԵ. 26. Եբր. Ը. Տ-12. Ժ. 16, 17.
ի Բ Օր. Ա. 81.
* Կամ՝ Թէ և անոնց վրայ տիրողը ես էի
լ Գլ. ԼԲ. 40. Բ Սաղ. Խ. 8. Եզեկ. ԺԱ. 19, 20. ԼԶ. 26, 27. Բ Կոր. Գ. 3.
խ Գլ. ԻԴ. 7. Լ. 22. ԼԲ. 38.
ծ Եսա. ԾԴ. 13. Յովհ. Զ. 45. Ա Կոր. Բ. 10. Ա Յովհ. Բ. 20.
կ Գլ. ԼԴ. 8. Ծ. 20. Միք. Է. 18. Գործ. Ժ. 43. ԺԴ. 39. Հռով. ԺԱ. 27.

տանդական պիտի շրջիս . քանզի
Տէրը երկրի վրայ նոր բան ստեղ-
ծեց . կնիկ մարդը պիտի շրջապատէ
23 էրիկ մարդը ։ Զօրաց Տէրը՝ Իսրա-
յէլին Աստուածը այսպէս կ'ըսէ .
Այսուհետեւ Յուդայի երկրին մէջ՝
ու անոր քաղաքներուն մէջ աս
խօսքը պիտի ըսեն , երբոր անոնց
գերութիւնը դարձրնեմ . ա Տէրը
քեզ օրհնէ ով արդարութեան բը-
24 նակարան՝ բ սուրբ լեռ ։ Եւ հոն՝
Յուդայի մէջ ու գ միանգամայն ա-
նոր բոլոր քաղաքներուն մէջ երկ-
րագործներ , ու հօտերու հետ
25 շրջողներ պիտի բնակին ։ Քանզի
յոգնած հոգին պիտի զովացրնեմ ,
ու ամէն մարած հոգին պիտի կըշ-
26 տացրնեմ ։ Ասոր վրայ արթըն-
ցայ , ու նայեցայ . և իմ քունս
ինծի անուշ էր ։
27 Ահա՛ օրեր կու գան՝ կ'ըսէ Տէրը ,
որ դ Իսրայէլի տունը ու Յուդայի
տունը մարդու սերմ ու անասունի
28 սերմ պիտի ցանեմ ։ Ինչպէս որ
ե խլելու , փլցրնելու , ու աւրելու ,
և կորսընցրնելու ու չարիք հաս-
ցրնելու համար՝ զ անոնց վրայ հսկե-
ցի , նոյնպէս ալ է շինելու ու տնկե-
լու համար՝ անոնց վրայ պիտի հըս-
29 կեմ՝ կ'ըսէ Տէրը ։ Ան ը օրերը մէյ-
մըն ալ պիտի չըսեն . Հայրերը ա-
զոխ կերան , ու որդւոցը ակռանե-
30 րը առին . թ Հապա ամէն մարդ իր
անօրէնութեանը համար պիտի
մեռնի . ամէն մարդ որ ազոխ կ'ու-
տէ , անոր ակռաները պիտի առ-
նեն ։
31 Ահա՛ ժ օրեր կու գան՝ կ'ըսէ Տէ-
րը , որ Իսրայէլի տանը հետ ու
Յուդայի տանը հետ նոր ուխտ պի-
32 տի ընեմ , Չէ թէ ան ուխտին պէս՝
որ անոնց հայրերուն հետ ըրի , ան
օրը որ ի անոնց ձեռքէն բռնեցի՝
զանոնք Եգիպտոսի երկրէն հանելու
համար . ինչու որ անոնք իմ ուխտս
զանց ըրին , * ես ալ անոնք մերժե-
33 ցի" , կ'ըսէ Տէրը . Հապա անձօրերէն
ետքը՝ լ Իսրայէլի տանը հետ ընելու
ուխտս ասիկայ է , ՚ կ'ըսէ Տէրը .
Իմ օրէնքս անոնց ներսի դին պի-
տի դնեմ , ու զանիկայ անոնց սըր-
տին վրայ պիտի գրեմ , խ ու ես ա-
նոնց Աստուած պիտի ըլլամ , և ա-
նոնք ինծի ժողովուրդ պիտի ըլլան ։
34 Ու անկէ ետքը մէկ մարդ մը իր ըն-
կերին , ու մէկ մարդ մը իր եղբօրը
պիտի չսորվեցրնէ՝ ըսելով թէ՝ Տէ-
րը ճանչցիր . հապա անոնց պզտի-
կէն մինչեւ մեծը՝ ծ ամէնը զիս պիտի
ճանչնան , կ'ըսէ՝ Տէրը . վասն զի
կ անոնց անօրէնութիւնը պիտի նե-
րեմ , ու անոնց մեղքը մէյմըն ալ
35 պիտի չյիշեմ ։ Այսպէս կ'ըսէ Տէ-

Ն. Ք. Ղ.Ք. Իրր 606

ա Ծն. Ա. 16. Սաղ. ՀԲ. 5, 17. ՃԺԹ. 2, 36, 37. ՃԺԹ. 89.
բ Եսա. ԾԱ. 15.
գ Գլ. Ժ. 16.
դ Սաղ. ՃԽԸ. 6. Եսա. ԾԴ. 9, 10. Գլ. ԼԴ. 20, 26.
ե Գլ. ԼԴ. 22.
զ Նեեմ. Գ. 1. Զաք. ԺԴ. 10.
է Եզեկ. Խ. Տ. Զաք. Բ. 1.
ը Բ Մն. ԻԳ. 15. Նեեմ. Գ. 28.
թ Յովել. Գ. 17.

րը՝ ա որ արեւը հաստատեց օրուան
լոյսին համար , և գիշերուան լոյսին
համար՝ լուսինին ու աստղերուն
կանոններ դրաւ , որ բ ծովը կը
յանդիմանէ երբոր անոր ալիքները
կը գոռան . գ անոր անունը Եհովայ
36 Սաբաւովթ է . դ Թէ որ աս կանոն-
ները իմ առջեւէս դադարին , կ'ըսէ
Տէրը , Իսրայէլին սերունդն ալ իմ
առջեւս միշտ ազգ ըլլալէն պիտի
37 դադարի ։ Տէրը այսպէս կ'ըսէ .
ե Թէ որ երկինքները կրնան վերէն
չափուիլ , ու երկրին հիմերը վա-
րէն քննուիլ , ես ալ բոլոր Իսրա-
յէլին սերունդը՝ իրենց բոլոր ըրած-
ներուն համար պիտի մերժեմ , կ'ը-
սէ Տէրը ։
38 Ահա՛ օրեր կու գան՝ կ'ըսէ Տէրը ,
որ զ Անանայէլի աշտարակէն մինչեւ
Անկեան դուռը՝ քաղաքը Տէրոջը
39 համար պիտի շինուի . Եւ անոր
դիմացէն է չափին լարը՝ մինչեւ Գա-
րեբի բլուրը պիտի ելլէ , ու դէպ 'ի
40 Գոաթ պիտի դառնայ ։ Եւ դիե-
րուն ու մոխրոց բոլոր ձորը , ու
բոլոր արտերը մինչեւ Կեդրոն հե-
ղեղատը , ը մինչեւ Ձիերուն դրանը
անկիւնը դէպ 'ի արեւելք՝ թ սուրբ
պիտի ըլլայ Տէրոջը . մէյմըն ալ
պիտի չքակուի , ու չփլչի յաւի-
տեան ։

## ԳԼ. ԼԲ

1 Երեմիա իր մարգարէութեանը համար Սեդեկիայէն բանտարկուած՝ 6 Անամայելի արտը ծախու կ'առնէ . 13 ու անոր մուրհակները Բարուքին յանձնելով՝ կը պատուիրէ որ զանոնք պահէ՝ իբրեւ նշան ժողովուրդին դառնալուն ։ 16 Երեմիա իր աղօթքին մէջ Աստուծոյ գանգատ կ'ընէ ։ 26 Աստուած փրկութեան պատանութիւնը կը նորոգէ ժողովուրդին մեղքերուն համար , 36 և կը խոստանայ բերկրալի գերեդարձութիւն մը ։

Իրր 590

ա Դ Թագ. ԻԵ. 1, 2. Գլ. ԼԹ. 1.
բ Նեեմ. Գ. 25. Գլ. ԼԴ. 1. ԼԷ. 21. ԼԸ. 6. ԼԹ. 14.
գ Գլ. ԼԴ. 2.
դ Գլ. ԼԴ. 3. ԼԸ. 18, 23. ԼԹ. 5. ԾԲ. 9.

1 Յուդայի ա Սեդեկիա թագաւորին
տասներորդ տարին՝ այսինքն
Նաբուգոդոնոսորին տասնութե-
երորդ տարին՝ Տէրոջը կողմանէ Ե-
2 րեմիային եղած խօսքն է ։ Եւ ան
ատենը Բաբելոնի թագաւորին
զօրքը Երուսաղէմը կը պաշարէր ,
ու Երեմիա մարգարէն՝ Յուդայի
թագաւորին տունը եղող բ բանտին
գաւիթին մէջը արգիլուած էր ։
3 Վասն զի Յուդայի Սեդեկիա թա-
գաւորը զանիկայ արգիլեց՝ ըսելով .
Դուն ինչու՞ համար մարգարէու-
թիւն ըրիր ու ըսիր թէ՝ Տէրը
այսպէս կ'ըսէ . գ Ահա՛ ես աս քա-
ղաքը Բաբելոնի թագաւորին ձեռ-
քը պիտի տամ , ու զանիկայ պիտի
4 առնէ . Եւ Յուդայի Սեդեկիա
թագաւորը դ Քաղդէացւոց ձեռքէն
պիտի չազատի . հապա անշուշտ
Բաբելոնի թագաւորին ձեռքը պի-
տի տրուի , ու անոր հետ բերան

Ն. Ք. Ծ.
իբր 590

առ բերան պիտի խօսի, և անոր
հետ աչք աչքի պիտի տեսնուի.
5 Ու անիկայ՝ Սեդեկիան Բաբելոն
պիտի տանի. ու անիկայ հոն պիտի
մնայ, [ե]մինչև որ ես անոր այցելու-
թիւն ընեմ՝ կ'ըսէ Տէրը. [զ]Թէ որ
Քաղդէացւոց հետ պատերազմ ը-
նէք, յաջողութիւն պիտի չըլլա-
նէք։
6 Ան ատենը Երեմիան ըսաւ. Տէ-
րոջը խօսքը ինծի եղաւ՝ ըսելով.
7 Ահա քու հօրեղբօրդ Սեղղումին
որդին Անամայէլը քեզի պիտի
գայ, ու պիտի ըսէ. Անաթովթի
մէջ եղող ագարակս քեզի ծախու
առ. վասն զի [է]ազգականութեան
իրաւունքով քեզի կ'իյնայ որ ծա-
8 խու առնես։ Եւ Տէրոջը խօսքին
համեմատ՝ իմ հօրեղբօրս որդին Ա-
նամայէլը ինծի՝ բանտին գաւիթը
եկաւ, ու ինծի ըսաւ. Շնորհք
ըրէ, Բենիամինի երկիրը՝ Անա-
թովթի մէջ ունեցած ագարակս
ծախու առ. վասն զի ժառանգու-
թեան իրաւունքը քուկդ է, ու
քեզի կ'իյնայ որ փրկես. քեզի ծա-
խու առ. ան ատենը գիտցայ որ
9 ասիկայ Տէրոջը խօսքն էր։ Եւ
հօրեղբօրս որդիէն՝ Անամայէլէն Ա-
նաթովթի մէջ եղող ագարակը
ծախու առի, ու [ը]ստակը՝ տասնու-
եօթը սիկղ արծաթ կշռեցի անոր։
10 Եւ մուրհակ մը գրեցի ու կնքեցի,
ու վկաներ բռնեցի, և արծաթը
11 կշիռքով կշռեցի։ Ու ստացուած-
քի մուրհակը՝ թէ՛ հրամանին ու
կանոններուն համեմատ կնքուածը,
12 և թէ բաց եղածը առի։ Ու ըս-
տացուածքի մուրհակը՝ հօրեղբօրս
որդւոյն Անամայէլին աչքերուն առ-
ջևը՝ ու ստացուածքի մուրհակին
մէջը գրուող [թ]վկայից աչքերուն
առջևը՝ բանտի գաւիթին մէջը
նստող բոլոր Հրէից աչքերուն առ-
ջևը՝ Մաասիայի որդւոյն Ներիայի
13 որդւոյն [ժ]Բարուքին տուի։ Եւ
անոնց աչքերուն առջևը Բարուքին
14 պատուիրեցի ու ըսի. Զօրաց Տէ-
րը՝ Իսրայէլին Աստուածը այսպէս
կ'ըսէ. Աս մուրհակները՝ աս կըն-
քուած ստացուածքի մուրհակը,
ու աս բաց մուրհակը առ, և զա-
նոնք հողէ ամանի մը մէ՛ջ դիր, որ
15 շատ օրեր մնան։ Քանզի զօրաց
Տէրը՝ Իսրայէլին Աստուածը այս-
պէս կ'ըսէ. Աս երկրիս մէջ՝ նորէն
տուներ ու ագարակներ և այգիներ
[ի]ծախու պիտի առնուի։
16 Ու ստացուածքի մուրհակը՝ Նե-
րիայի որդւոյն Բարուքին տալէն
ետքը՝ Տէրոջը աղօթք ըրի ու ըսի.
17 Ո՜հ, Տէր Եհովայ՝ ահա՛ դուն քու
մեծ զօրութեամբդ ու երկընցած
բազուկովդ [լ]երկինքը ու երկիրը
ստեղծեցիր. [խ]բնաւ մէկ բան մը
18 քեզի դժուարին չէ. Դուն [ծ]հա-
զարներուն ողորմութիւն կ'ընես,
ու հայրերուն անօրէնութեանը
պատիժը՝ անոնցմէ ետքը անոնց
որդիներուն ծոցը կու տաս. դուն
մեծ ու [կ]հզօր Աստուած ես, [հ]քու
19 անունդ Զօրաց Տէր է։ Դուն
[ձ]խորհրդով մեծ, ու գործքով
զօրաւոր ես, այնպէս որ ամէն մէ-
կուն՝ իր ճամբաներուն համեմատ,
ու անոր գործքերուն պտուղին հա-
մեմատ հատուցում ընելու համար՝
քու [ճ]աչքերդ մարդոց որդիներուն
բոլոր ճամբաներուն վրայ բաց է։
20 Դուն որ մինչև աս օրս Եգիպտոսի
երկրին մէջ, ու Իսրայէլի մէջ, և
բոլոր մարդոց մէջ նշաններ ու հը-
րաշքներ ընելով՝ քեզի [մ]անուն
վաստըկեցար, ինչպէս որ այսօր
21 կ'երեւնայ. Եւ [յ]քու ժողովուրդդ
Իսրայէլը՝ նշաններով, ու հրաշք-
ներով, և զօրաւոր ձեռքով, ու
երկընցած բազուկով, և մեծ ա-
հարկութեամբ Եգիպտոսի երկրէն
22 հանեցիր, Ու անոնց տուիր աս եր-
կիրը՝ որն որ իրենց հայրերուն եր-
դում ըրեր էիր՝ իրենց տալու, [ն]ա-
նանկ երկիր մը որ կաթ ու մեղր կը
23 բղխէ. Ու մտան զանիկայ ժառան-
գեցին. բայց [շ]քու ձայնիդ ականջ
չտուին, և քու օրէնքիդ համեմատ
չքալեցին. անոնք չըրին ինչ որ
անոնց պատուիրեցիր որ ընեն.
ուստի աս բոլոր չարիքը անոնց
24 վրայ բերիր։ Ահա՛ քաղաքին դէմ
[ո]պատնէշներ կանգնուեցան որ զա-
նիկայ առնեն. և քաղաքը՝ [չ]սու-
րին, սովին ու ժանտախտին պատ-
ճառաւը՝ անոր դէմ պատերազմ
ընող [պ]Քաղդէացւոց ձեռքը տրուե-
ցաւ. և քու ըսածդ կատարուե-
25 ցաւ. ու ահա կը տեսնես։ Բայց
դուն՝ ո՛վ Տէր Եհովայ, ինծի ըսիր
որ՝ Ագարակը ստակով քեզի ծա-
խու առ, ու վկաներ բռնէ. և [ջ]աս
քաղաքը Քաղդէացւոց ձեռքը կը
մատնուի։
26 Եւ Տէրոջը խօսքը Երեմիային
27 եղաւ՝ ըսելով. Ահա ես եմ Եհո-
վայ [ռ]ամէն մարմնոյ Աստուածը.
[ս]միթէ ինծի դժուարին բան մը
28 կա՞յ։ Անոր համար Տէրը այսպէս
կ'ըսէ. Ահա [վ]ես աս քաղաքը
Քաղդէացւոց ձեռքը ու Բաբելո-
նի Նաբուգոդոնոսոր թագաւորին
ձեռքը պիտի տամ. ու զանիկայ
29 պիտի առնէ. Եւ աս քաղաքիս
դէմ պատերազմ ընող Քաղդէա-
ցիները պիտի գան, ու [տ]աս քա-
ղաքը կրակի պիտի տան ու այրեն.
նաև [ր]այրեն ան տուները՝ որո-

ե Գլ. իէ. 22։
զ Գլ. իա. 4։ լգ. 5։
է Ղև. իե. 24, 25, 32։ Հռութ. դ. 4։
ը Ծն. իգ. 16։ Զաք. ժա. 12։
թ Տես. Եզ. ը. 2։
ժ Գլ. լզ. 4։
ի Հմր 37, 43։
լ Դ Թագ. ժթ. 15։
խ Ծն. ժը. 14։ Հմր 27։ Ղուկ. ա. 37։
ծ Ել. ի. 6։ լդ. 7։ Բ Օր. ե. 9, 10։
կ Ես. թ. 6։
հ Գլ. ժ. 16։
ձ Ես. իը. 29։
ղ Գլ. ժէ. 10։
ճ Յոբ. լդ. 21։ Սաղ. լդ. 13։ Առակ. ե. 21։ Գլ. ժզ. 17։
մ Ել. թ. 16։ Ա Մն. ժէ. 21։ Ես. կգ. 12։ Դան. թ. 15։
յ Ել. զ. 6։ Բ Թագ. է. 23։ Ա Մն. ժէ. 21։ Սաղ. ճլզ. 11, 12։
ն Ել. գ. 8, 17։ Գլ. ժա. 5։
շ Նեեմ. թ. 26։ Գլ. ժա. 8։ Դան. թ. 10—14։
ո Գլ. լգ. 4։
չ Գլ. ժդ. 12։
պ Հմր 25, 36։
ջ Հմր 24։
ռ Թուոց. ժզ. 22։
ս Հմր 17։
վ Հմր 3։
տ Գլ. իա. 10։ լէ. 8, 10։ ծբ. 13։
ր Գլ. ժթ. 13։

Ն. Ք. ԳՔ. Իրր 590

րոնց տանիքներուն վրայ Բահա-
ղին խունկ կը ծխէին, և օտար աս-
տուածներուն թափելու նուէրներ
կը մատուցանէին՝ զիս բարկացը-
30 նելու համար ։ Քանզի Իսրայէլի
որդիքը ու Յուդայի որդիքը ∘ի-
րենց մանկութենէն 'ի վեր իմ առ-
ջևս միայն չարութիւն կը գործեն.
որովհետև Իսրայէլի որդիքը իրենց
ձեռացը գործքերովը անդադար զիս
կը բարկացընեն՝ կ'ըսէ Տէրը ։
31 Քանզի աս քաղաքը՝ իր շինուած
օրէն մինչև աս օրս՝ իմ բարկու-
թեանս ու սրտմտութեանս համար
եղաւ, ⁼որ զանիկայ երեսիս առջև-
32 էն վերցընեմ՝ Իսրայէլի որդւոցը,
ու Յուդայի որդւոցը՝ ⁺թէ իրենց
և թէ իրենց թագաւորներուն, իշ-
խաններուն, քահանաներուն, ու
մարգարէներուն, և Յուդայի մար-
դիկներուն, ու Երուսաղէմի բնակ-
չացը բոլոր չարութեանը պատճա-
ռաւ՝ որ ըրին զիս բարկացընելու
33 համար ։ Եւ ինծի ⁺կռնակ դար-
ձուցին և ոչ թէ երես, ու թէև
անոնց սորվեցուցի՝ ⁺կանուխ ել-
լելով ու սորվեցընելով, բայց ա-
նոնք մտիկ չըրին, որ խրատ ըն-
34 դունին. Հապա ⁺իմ անունովս
կոչուած տանը մէջ իրենց պղծու-
թիւնները դրին՝ զանիկայ պղծե-
35 լու համար ։ Ու Ենովմի որդւոյն
ձորին մէջը եղող Բահաղին բարձր
տեղերը շինեցին՝ ⁼իրենց տղաք-
ները ու աղջիկները ⁺Մողոքին հա-
մար կրակէ անցընելու, ⁺որն որ ես
անոնց հրամայած չէի, ու միտքէս
ալ անցած չէր, որ անոնք աս
պղծութիւնը ընեն՝ Յուդային մե-
ղանչել տալու համար ։
36 Ուստի հիմա Իսրայէլին Տէր Աս-
տուածը այսպէս կ'ըսէ աս քաղա-
քիս համար՝ որ դուք կ'ըսէք թէ՝
սրով, սովով ու ժանտախտով
⁺Բաբելոնի թագաւորին ձեռքը կը
37 մատնուի. Ահա ես ⁺զանոնք պի-
տի ժողվեմ ան բոլոր երկիրներէն,
ուր որ զանոնք՝ իմ բարկու-
թեամբս, սրտմտութեամբս ու մեծ
ցասումովս վռընտեցի, և զանոնք
աս տեղս պիտի դարձընեմ, ու
⁺ապահովութեամբ պիտի բնակե-
38 ցընեմ ։ Եւ անոնք ⁺ինծի ժո-
ղովուրդ պիտի ըլլան, ես ալ ա-
39 նոնց Աստուած պիտի ըլլամ. Ու
⁺անոնց մէկ սիրտ ու մէկ ճամբայ
պիտի տամ, որ միշտ ինծմէ վախ-
նան, և իրենց՝ ու իրենցմէ ետքը
իրենց զաւակներուն աղէկ ըլլայ ։
40 Եւ ⁺անոնց հետ յաւիտենական
ուխտ մը պիտի ընեմ. որ անոնց
բարիք ընելէն՝ անոնցմէ ետ չքա-
շուիմ. ու ⁺իմ վախս անոնց

սրտին մէջը պիտի դնեմ, որ ինծմէ
41 չխոտորին ։ Եւ ⁺անոնց բարիք ը-
նելով՝ անոնց վրայ պիտի ուրա-
խանամ, ու ⁺զանոնք՝ բոլոր
սրտովս ու բոլոր հոգիովս՝ ճշմար-
տութեամբ աս երկրիս մէջը պիտի
42 տնկեմ ։ Քանզի Տէրը այսպէս
կ'ըսէ. ⁺Ինչպէս որ աս ժողովուր-
դին վրայ աս բոլոր մեծ չարիքը
բերի, այնպէս ալ անոնց վրայ պի-
տի բերեմ ան բոլոր բարիքը՝ որ ա-
43 նոնց համար խօսեցայ ։ Ու ⁺նորէն
ագարակներ ծախու պիտի առնուի
աս երկրին մէջ, ⁺որուն համար
դուք կ'ըսէք թէ՝ Ամայացած է,
ու մարդէ և անասունէ զուրկ է,
⁼ Քաղդէացւոց ձեռքը տրուած
44 է ։ ⁺Բենիամինի երկրին մէջ, ու
Երուսաղէմին շրջակայ տեղուանքը,
և Յուդայի քաղաքներուն մէջ, ու
լեռնային քաղաքներուն մէջ, և
դաշտային քաղաքներուն մէջ, ու
հարաւային քաղաքներուն մէջ ըս-
տակով ագարակներ ծախու պիտի
առնեն. և մուրհակներ պիտի գը-
րեն, ու պիտի կնքեն, ու վկաներ
պիտի բռնեն. վասն զի ⁺անոնց
գերութիւնը ետ պիտի դարձընեմ,
կ'ըսէ Տէրը ։

ԳԼ. ԼԳ

1 Աստուած կը խոստանայ դերեդարձութիւն մը, 9 ուրախալի վիճակ մը. 12 և հաստատուն կառավարութիւն մը, 15 Քրիստոս՝ արդարութեան Շառաւիղը. 17 թագաւորութեան և քահանայութեան տևողութիւնը. 20 և հաստատուն սուրբ ուխտ մը ։

1 Եւ Տէրոջը խօսքը երկրորդ անգամ
Երեմիային եղաւ, երբոր անի-
կայ տակաւին ⁼բանտին գաւիթին
մէջը արգիլուած էր, ըսելով.
2 Այսպէս կ'ըսէ Տէրը ⁺որ աս բանը
շինեց, Տէրը՝ որ զանիկայ հաստա-
տելու համար՝ զանիկայ ստեղծեց,
3 ⁺որուն անունը Եհովայ է. ⁺Ինծի
կանչէ, ու քեզի պատասխան տամ,
և քեզի մեծ ու խորին բաներ պատ-
4 մեմ, որ դուն չես գիտեր ։ Վասն
զի աս քաղաքին տուներուն համար,
ու Յուդայի թագաւորներուն տու-
ներուն համար՝ որոնք ⁺պատնէշնե-
րէն ու սուրէն փլած են, Իսրայէլին
Տէր Աստուածը այսպէս կ'ըսէ.
5 ⁺*Քաղդէացւոց դէմ" պատերազմ
ընելու կու գան. և ան տուները
մեռած մարդոց դիերովը պիտի լե-
ցուին, որոնք իմ բարկութեամբս
ու սրտմտութեամբս պիտի զար-
նեմ. վասն զի ես աս քաղաքէն իմ
երեսս ծածկեցի, անոնց բոլոր չա-
6 րութեանը համար ։ Ահա ⁺անոր
առողջութիւն ու բժշկութիւն պի-
տի բերեմ, ու զանոնք պիտի բժշկ-
կեմ, և խաղաղութեան ու ճշմար-

Ն. Ք. ԳՔ. Իրր 590

Իր Օր. Լ. 9. Սոփ. Գ. 17.
Լ Գլ. ԻԴ. 6. ԼԱ. 28. Ամով. Թ. 15.
Ի Գլ. ԼԱ. 28.
Ծ Հմր 15.
Կ Գլ. ԼԴ. 10.
Հ Գլ. ԺԷ. 26.
Յ Գլ. ԼԴ. 7. 11. 26.
Ղ Գլ. ԼԲ. 2. 3.
Բ Ես. ԼԷ. 26.
Գ Ել. ԺԵ. 3. Ամով. Ե. 8.
Դ Սաղ. ԴԱ. 15. Գլ. ԻԹ. 12.
Ե Գլ. ԼԲ. 24.
Զ Գլ. ԼԲ. 5. *Կամ՝ Քաղդէացիք
Է Գլ. Լ. 17.

Շ Գլ. Բ. 7. Գ. 25. Է. 22—26. ԻԲ. 21. Եզեկ. Ի. 28.
Ո Դ Թագ. ԻԳ. 27. ԻԴ. 3.
Չ Ես. Ա. 4. 6. Դան. Թ. 8.
Պ Գլ. Բ. 27. Է. 24.
Ջ Գլ. Է. 13.
Ռ Գլ. Է. 30. 31. ԻԳ. 11. Եզեկ. Ը. 5. 6.
Ս Գլ. Է. 31. ԺԹ. 5.
Վ Ղև. ԺԸ. 21. Գ Թագ. ԺԱ. 33.
Տ Գլ. Է. 31.
Ր Հմր 24.
Ց Բ Օր. Լ. 3. Գլ. ԻԳ. 3. ԻԹ. 14. ԼԱ. 10. Եզեկ. ԼԷ. 21.
Ւ Գլ. ԻԳ. 6. ԼԴ. 16.
Փ Գլ. ԻԴ. 7. Լ. 22. ԼԱ. 33.
Ք Գլ. ԻԴ. 7. Եզեկ. ԺԱ. 19. 20.
Օ Բ Եզ. ԺԵ. 3. Գլ. ԼԱ. 31.
Ֆ Գլ. ԼԱ. 33.

Ն. Ք. ԳՔ. Իւր 590

տութեան առատութիւնը անոնց
7 պիտի յայտնեմ ։ Եւ ըՅուդային
գերութիւնը ու Իսրայէլին գերութիւնը պիտի դարձնեմ, ու զանոնք բառաջինին պէս պիտի *հաստա
8 տեմ ։ Եւ անոնց ինծի դէմ գործած բոլոր անօրէնութենէն ծզանոնք պիտի սրբեմ. ու անոնց ինծի
դէմ ըրած էբոլոր անօրէնութիւնները ու յանցանքները պիտի ներեմ։
9 ՆԵւ ասիկայ ինծի՝ ուրախութեան
անուն, փառք ու պարծանք պիտի
ըլլայ երկրիս բոլոր ազգերուն մէջ՝
որոնք պիտի լսեն ան ամէն բարիքը՝
որ ես անոնց պիտի ընեմ. և էպիտի վախնան ու դողան ան ամէն
բարիքին ու ամէն յաջողութեանը
համար՝ որ ես աս քաղաքին պիտի ընեմ ։
10 Տէրը այսպէս կ'ըսէ. Աս տեղուոյս
մէջ՝ ծորուն համար դուք կ'ըսէք
թէ՝ Մարդէ ու անասունէ զուրկ
ըլլալով՝ անապատ դարձած է, և
Յուդայի քաղաքներուն մէջ, ու
Երուսաղէմի փողոցներուն մէջ՝ որոնք անմարդ ու անբնակ, ու անասունէ զուրկ ըլլալով՝ ամայացած
11 են, Նորէն պիտի լսուի 1ցնծութեան ձայն, և ուրախութեան
ձայն, փեսայի ձայն, ու հարսի
ձայն, Նաև անոնց ձայնը՝ որոնք
Տէրոջը տունը 2գոհութեան ընծաներ բերելով՝ կ'ըսեն. 3Գոհացէք
զօրաց Տէրոջմէն. ինչու որ Տէրը
բարի է, ինչու որ անոր ողորմութիւնը յաւիտեան է. Դքանզի աս
երկրիս գերիները իրենց առջի վիճակին պիտի դարձնեմ՝ կ'ըսէ Տէ
12 րը ։ Զօրաց Տէրը այսպէս կ'ըսէ.
ԵԱս տեղուոյս մէջ՝ որ մարդէ ու
անասունէ զուրկ ըլլալով՝ անապատ դարձած է, և անոր ամէն
քաղաքներուն մէջ՝ նորէն հօտեր
պառկեցընող հովիւներու բնակա
13 րաններ պիտի ըլլան ։ ԶԼեռնային
քաղաքներուն մէջ՝ դաշտային քաղաքներուն մէջ՝ ու հարաւային քաղաքներուն մէջ՝ և Բենիամինի երկրին մէջ՝ ու Երուսաղէմին շրջակայ
տեղուանքը՝ և Յուդայի քաղաքներուն մէջ՝ հօտերը էդարձեալ իրենց
համրողին ձեռքէն պիտի անցնին,
կ'ըսէ Տէրը ։
14 ՆԱհա՛ օրեր կու գան՝ կ'ըսէ Տէրը,
որ Իսրայէլի տանը համար և Յուդայի տանը համար ըսած Ղբարի
15 խօսքս պիտի կատարեմ ։ Ան օրերը ու ան ժամանակը՝ Դաւիթին
*արդարութեան շառաւիղ մը պիտի բուսցընեմ. և անիկայ երկրի
վրայ իրաւունք ու արդարութիւն
16 պիտի ընէ ։ ՂԱն օրերը Յուդան
պիտի ազատի, ու Երուսաղէմը

ը Գլ. Լ. 3 ։ ԼԲ. 44 ։ Հմր 11 ։
բ Ես. Ա. 26 ։ Գլ. ԻԴ. 6 ։ Լ. 20 ։ ԼԱ. 4, 28 ։ ԽԲ. 10 ։
* Եբր. շինեմ ։
ծ Եզեկ. ԼԶ. 25 ։ Զաքար. ԺԳ. 1 ։ Եբր. Թ. 13, 14 ։
է Գլ. ԼԱ. 34 ։ Միք. Է. 18 ։
Ն Ես. ԿԲ. 7 ։ Գլ. ԺԳ. 11 ։
է Տես Ես. Կ. 5 ։
ծ Գլ. ԼԲ. 43 ։
1 Գլ. Է. 34 ։ ԺԶ. 9 ։ ԻԵ. 10 ։ Յայտ. ԺԸ. 23 ։
2 Ղև. Է. 12 ։ Սաղ. ՃԷ. 22 ։ ՃԺԶ. 17 ։
3 Ա Մն. ԺԶ. 8, 34 ։ Բ Մն. Ե. 13 ։ Է. 3 ։ Եզր. Գ. 11 ։ Սաղ. ՃԼԶ. 1 ։ Ես. ԺԲ. 4 ։
Դ Հմր 7 ։
Ե Ես. ԿԵ. 10 ։ Գլ. ԼԳ. 24 ։ Ծ. 19 ։
Զ Գլ. ԺԷ. 26 ։ ԼԲ. 44 ։
Է Ղև. ԻԷ. 32 ։
Ն Գլ. ԻԳ. 5 ։ ԼԱ. 27, 31 ։
Ղ Գլ. ԻԹ. 10 ։
* Ես. Դ. 2 ։ ԺԱ. 1 ։ Գլ. ԻԳ. 5 ։
Ղ Գլ. ԻԳ. 6 ։

ապահովութեամբ պիտի բնակի. և
աս է անոր անունը՝ որով պիտի կոչուի. Տէրը մեր արդարութիւնն
17 է ։ Վասն զի Տէրը այսպէս կ'ըսէ.
Դաւիթէն՝ ղԻսրայէլի տանը աթոռին վրայ նստող մարդ պակաս պի
18 տի չըլլայ. Ու Ղևտացի քահանաներէն՝ Ողջակէզ, հացի ընծայ ու
զոհ մատուցանող մարդ յաւիտեան պակաս պիտի չըլլայ իմ առջևէս ։
19 Եւ Տէրոջը խօսքը Երեմիային
եղաւ՝ ըսելով. Տէրը այսպէս կ'ը
20 սէ. ՍԹէ որ ցորեկուան ուխտս,
ու գիշերուան ուխտս կրնաք աւրել, որ ցորեկը ու գիշերը իրենց
21 ժամանակովը չըլլան, ՍԻմ ծառայիս Դաւիթին հետ ունեցած ուխտըս ալ պիտի աւրուի, որ իր աթոռին վրայ թագաւորութիւն
ընելու որդի չունենայ. անանկ ալ
ինծի ծառայութիւն ընող Ղևտացի քահանաներուն հետ ունե
22 ցած ուխտս ։ Ինչպէս որ Վերկնից
զօրքերը չեն համրուիր, ու ծովուն
աւազը չչափուիր, իմ ծառայիս
Դաւիթին սերունդը՝ և ինծի ծառայութիւն ընող Ղևտացիները
այնպէս պիտի շատցընեմ ։
23 Եւ Տէրոջը խօսքը Երեմիային
24 եղաւ՝ ըսելով. Չե՞ս տեսներ որ աս
ժողովուրդը ինչ կը խօսի, ու կ'ըսէ. Տէրը իր ընտրած Տերկու ազգատոհմերը երեսէ ձգեց. ու անոնք իմ ժողովուրդս կ'անարգեն,
մինչև զանիկայ իրենց առջևը ազգ
25 չսեպելով ։ Տէրը այսպէս կ'ըսէ.
Թէ որ Րցորեկուան ու գիշերուան
համար ուխտ ըրած չեմ, և Ցերկինքներուն ու երկրիս կանոններ
26 դրած չեմ, ՒՅակոբին ու իմ ծառայիս Դաւիթին սերունդն ալ երեսէ պիտի ձգեմ, որ մէյմըն ալ
անոր սերունդէն՝ Աբրահամին, Իսահակին ու Յակոբին սերունդին
վրայ իշխաններ չդնեմ. վասն զի
Փանոնց գերութիւնը պիտի դարձընեմ, ու անոնց պիտի ողորմիմ ։

Ն. Ք. ԳՔ. Իւր 590
ղ Բ Թագ. Է. 16 ։ Գ Թագ. Բ. 4 ։ Սաղ. ՁԹ. 29, 36 ։ Ղուկ. Ա. 32, 33 ։
Ո Հռով. ԺԲ. 1 ։ ԺԵ. 16 ։ Ա Պետ. Բ. 5, 9 ։ Յայտ. Ա. 6 ։
Ս Սաղ. ՁԹ. 37 ։ Ես. ԾԴ. 9 ։ Գլ. ԼԱ. 36 ։ Հմր 25 ։
Ս Սաղ. ՁԹ. 34 ։
Վ Ծն. ԺԳ. 16 ։ ԺԵ. 5 ։ ԻԲ. 17 ։ Գլ. ԼԱ. 37 ։
Տ Հմր 21, 22 ։
Ր Հմր 20 ։ Ծն. Ը. 22 ։
Ց Սաղ. ՀԴ. 16, 17 ։ ՃԴ. 19 ։ Գլ. ԼԱ. 35, 36 ։
Ւ Գլ. ԼԱ. 37 ։
Փ Հմր 7, 11 ։ Եզր. Բ. 1 ։

## ԳԼ. ԼԴ

1 Երեմիա կը նախաձայնէ Սեդեկիային ու Երուսաղէմին գերութիւնը ։ 8 Իշխանները ու ժողովուրդը իրենց ծառաները արձակելէն ետև՝ Աստուծոյ ուխտին դէմ՝ զանոնք նորէն կը ծառայեցընեն ։ 12 Երեմիա հրէից անհնազանդութեանը համար կը մարգարէանայ թէ անոնք ու Սեդեկիան իրենց թշնամիներուն ձեռքը պիտի մատնուին ։

1 Երբոր Քբաբելոնի Նաբուգոդոնոսոր թագաւորը իր բոլոր զօրքովը, ու իր իշխանութեան տակը
եղող Բերկրին բոլոր թագաւորութիւններովը, և բոլոր ժողովուրդներով՝ Երուսաղէմի վրայ, ու անոր

Իւր 591
Ք Դ Թագ. ԻԵ. 1 ։ Գլ. ԼԹ. 1 ։ Ծր. 4 ։
Բ Գլ. Ա. 15 ։

բոլոր քաղաքներուն վրայ պատե-
րազմ կ'ընէր, Տէրոջը կողմանէ Ե-
րեմիային աս խօսքը եղաւ, ըսե-
լով.
2 Իսրայէլին Տէր Աստուածը այս-
պէս կ'ըսէ. Գնա՛, Յուդայի Սեդե-
կիա թագաւորին խօսէ, ու անոր
ըսէ. Տէրը այսպէս կ'ըսէ. Ահա՛
[ե]ես աս քաղաքը Բաբելոնի թագաւո-
րին ձեռքը պիտի տամ, ու [ա]զա-
3 նիկայ կրակով պիտի այրէ. Եւ
[բ]դուն անոր ձեռքէն պիտի չազա-
տիս. հապա անշուշտ պիտի բռ-
նուիս, ու անոր ձեռքը պիտի
տրուիս. և քու աչքերդ Բաբելոնի
թագաւորին աչքերը պիտի տես-
նեն. ու անոր բերանը քու բերնիդ
հետ պիտի խօսակցի. ու Բաբելոն
4 պիտի երթաս: Բայց Տէրոջը խօս-
քը մտիկ ըրէ՛ ով Սեդեկիա Յու-
դայի թագաւոր, Տէրը քեզի հա-
մար այսպէս կ'ըսէ. Դուն սրով
5 պիտի չմեռնիս. Դուն խաղաղու-
թեամբ պիտի մեռնիս. և ինչպէս
որ [գ]քեզմէ առաջ եղող քու հայ-
րերուդ՝ առջի թագաւորներուն
համար [ե]խունկեր ծխեցին, [ը]նոյնպէս
ալ քեզի համար պիտի ծխեն, ու
Վա՜յ տէր իմ՝ ըսելով, [ը]քու վրադ
պիտի ողբան. վասն զի աս խօսքը
ես խօսեցայ, կ'ըսէ Տէրը:
6 Ու Երեմիա մարգարէն աս բոլոր
խօսքերը Յուդայի Սեդեկիա թա-
գաւորին խօսեցաւ Երուսաղէմի
7 մէջ: Եւ Բաբելոնի թագաւորին
զօրքը՝ Երուսաղէմի դէմ ու Յու-
դայի մնացած բոլոր քաղաքներուն
դէմ Լաքիսին ու Ազեկային հետ
պատերազմ կ'ընէր. վասն զի [թ]Յու-
դայի քաղաքներէն՝ պարսպաւոր
քաղաքներ ասոնք մնացեր էին:
8 Տէրոջը կողմանէ Երեմիային ե-
ղած խօսքն է՝ երբոր Սեդեկիա թա-
գաւորը Երուսաղէմի մէջ եղող բո-
լոր ժողովուրդին հետ ուխտ ըրաւ
9 որ [ժ]ազատութիւն քարոզեն, [ի]Որ
ամէն մարդ իր ծառան, ու ամէն
մարդ իր աղախինը, Եբրայեցի
մարդը ու Եբրայեցի կնիկը ազատ
արձակէ, [լ]ու մէյմըն ալ մէկ մարդ-
մը իր Հրէայ եղբայրը չծառայե-
10 ցընէ: Ու հնազանդեցան բոլոր իշ-
խանները, ու բոլոր ժողովուրդը՝
որոնք այն ուխտին մէջ մտան, որ
ամէն մարդ իր ծառան, ու ամէն
մարդ իր աղախինը ազատ արձակէ,
և ալ զանոնք չծառայեցընէ. հնա-
զանդեցան, և զանոնք արձակեցին.
11 Բայց [խ]անկէ ետքը դարձան, ու ի-
րենց ազատ թող տուած ծառա-
ները ու աղախինները ետ դարձու-
ցին, և զանոնք բռնադատեցին՝ որ
ծառաներ ու աղախիններ ըլլան:

Ն. Ք. Ծ. իբր 591

ե Գլ. իա. 10. լբ. 3, 28.
ա Գլ. լբ. 29. Հմր 22.
բ Գլ. լբ. 4.
գ Տե՛ս Բ Մն. ժզ. 14. իա. 19.
ե Տե՛ս Դան. բ. 46.
ը Տե՛ս Գլ. իբ. 18.
թ Դ Թագ. ժը. 13. ժթ. 8. Բ Մն. ժա. 5, 9.
ժ Ել. իա. 2. Ղև. իե. 10. Հմր 14.
ի Նեեմ. ե. 11.
լ Ղև. իե. 39—46.
իբր 590
խ Տե՛ս Հմր 21. Գլ. լէ. 5.

12 Ու Տէրոջը խօսքը Երեմիային
13 եղաւ Տէրոջմէն, ըսելով. Իսրա-
յէլին Տէր Աստուածը այսպէս կ'ը-
սէ. Ես ձեր հայրերուն հետ ուխտ
ըրի՝ զանոնք Եգիպտոսի երկրէն
ծառայութեան տունէն հանած
14 օրս, ու ըսի. [ծ]Եօթը տարիէն ետ-
քը՝ ձեզմէ ամէն մէկը ազատ պիտի
արձակէ իր Եբրայեցի եղբայրը, որ
քեզի ծախուած է, ու վեց տարի
քեզի ծառայեր է. զանիկայ քովէդ
ազատ արձակես. բայց ձեր հայրերը
ինծի մտիկ չըրին, ու ականջնին
15 չծռեցին: Եւ դուք այսօր դար-
ձաք, ու ամէն մարդ իր ընկերին
ազատութիւն քարոզելով՝ իմ առ-
ջևս ուղիղ եղածը ըրիք, և [կ]իմ
առջևս ուխտ ըրիք [հ]այն տանը մէջ՝
որուն վրայ իմ անունս կոչուած է.
16 Բայց ետքը դառնալով՝ [ձ]իմ անունս
պղծեցիք. ու ամէնքդ ալ ձեր ա-
զատ արձակած, ու իրենց կամացը
թող տուած ծառաները ու աղա-
խինները ետ դարձուցիք, ու զա-
նոնք բռնադատեցիք՝ որ ձեզի ծա-
ռաներ ու աղախիններ ըլլան:
17 Անոր համար Տէրը այսպէս կ'ըսէ.
Դուք ինծի մտիկ չըրիք, որ ձեզմէ
ամէն մէկը իր եղբօրը համար, ու
ամէն մէկը իր ընկերին համար ա-
զատութիւն քարոզէ. ահա ես ձե-
զի համար՝ կ'ըսէ Տէրը, [ղ]սուրին՝
ժանտախտին ու սովին ազատու-
թիւն կը քարոզեմ. ու ձեզ՝ [ճ]երկրիս
բոլոր թագաւորութիւններուն մէջ
18 նեղութեան պիտի մատնեմ: Եւ
[մ]զուարակը երկուքի կտրելով, ու
անոր կտորներուն մէջտեղէն անց-
նելով՝ իմ առջևս ըրած ուխտեր-
նուն խօսքերը չկատարող, և իմ
ուխտս զանց ընող մարդիկները
19 պիտի մատնեմ, Այսինքն Յուդային
իշխանները, ու Երուսաղէմին իշ-
խանները, պալատականները, և
քահանաները, ու երկրին բոլոր ժո-
ղովուրդը՝ որոնք զուարակին կտոր-
20 ներուն մէջտեղէն անցան, Զանոնք
իրենց թշնամիներուն ձեռքը, ու
իրենց հոգին փնտռողներուն ձեռ-
քը պիտի մատնեմ. և անոնց
[յ]դիերը երկինքի թռչուններուն ու
երկրի գազաններուն կերակուր պի-
21 տի ըլլան: Եւ Յուդայի Սեդեկիա
թագաւորը, ու անոր իշխանները՝
իրենց թշնամիներուն ձեռքը, ու
իրենց հոգին փնտռողներուն ձեռ-
քը, և [ն]ձեզմէ դարձող Բաբելոնի
թագաւորին զօրքերուն ձեռքը
22 պիտի մատնեմ: [շ]Ահա ես հրա-
մայեցի կ'ըսէ Տէրը, ու զանոնք աս
քաղաքը ետ պիտի բերեմ, և անոր
դէմ պատերազմ պիտի ընեն, [ո]ու
զանիկայ պիտի առնեն ու կրակով

Ն. Ք. Ծ. իբր 590

ծ Ել. իա. 2. իգ. 10. Բ Օր. ժե. 12.
կ Դ Թագ. իգ. 3. Նեեմ. ժ. 29.
հ Գլ. է. 10.
ձ Ել. ի. 7. Ղև. ժթ. 12.
ղ Գլ. լբ. 24, 36.
ճ Բ Օր. իը. 25, 64. Գլ. ժթ. 18.
մ Տե՛ս Ծն. ժե. 10, 17.
յ Գլ. է. 33. ժզ. 4. ժթ. 7.
ն Տե՛ս Գլ. լէ. 5, 11.
շ Գլ. լէ. 8, 10.
ո Գլ. լբ. 3. լթ. 1, 2, 8. ծբ. 7, 13.

այրեն . և Ն Յուդայի քաղաքները՝
անբնակ ամայութեան պիտի դար-
ձընեմ ։

## ԳԼ. ԼԵ

1 Երեմիա՝ Ռեքաբեանց հնազանդութիւնը յի-
շելով , 12 կը դատապարտէ Հրէից անհնազան-
դութիւնը ։ 18 Աստուած կ'օրհնէ Ռեքա-
բեանները իրենց հնազանդութեանը համար ։

1 Յուդայի թագաւորին Յովսիայի
որդւոյն Յովակիմին օրերը՝ Տէ-
րոջը կողմանէ Երեմիային եղած
2 խօսքն է , որ ըսաւ . [ա]Ռեքաբեանց
տունը գնա , ու անոնց հետ խօսէ՛ ,
և զանոնք Տէրոջը տունը՝ մէկ [բ]սե-
նեակ մը տար , ու անոնց գինի խըմ-
3 ցուր ։ Եւ Քաբասինիայի որդւոյն
Երեմիային որդին Յեզոնիան , ու
անոր եղբայրները , և բոլոր որդինե-
րը , ու Ռեքաբեանց բոլոր տունը
4 առի . Եւ զանոնք Տէրոջը տունը
տարի Սեղղումի որդւոյն Մաասիա
[գ]դռնապանին սենեակին վրայ ե-
ղող իշխաններուն սենեակին քովի՝
Աստուծոյ մարդուն Յեգդողիայի
որդւոյն Անանի որդւոցը սենեակը .
5 Ու Ռեքաբեանց տանը որդւոցը
առջևը գինիով լեցուն ամաններ ու
գաւաթներ դրի , և անոնց ըսի .
6 Գինի խմեցէք ։ Ու անոնք ըսին .
Գինի չենք խմեր . քանզի մեր հայ-
րը՝ [դ]Ռեքաբի որդին Յովնադաբ
մեզի պատուիրեց ու ըսաւ . Դուք
ու ձեր որդիքը յաւիտեան գինի
7 չխմէ՛ք . Եւ տուն չշինէ՛ք , ու սերմ
չցանէ՛ք , և այգի չտնկէ՛ք ու չստա-
նաք . հապա ձեր բոլոր օրերը վրան-
ներու մէջ բնակիք . [ե]որպէս զի ձեր
պանդուխտ եղած երկրին վրայ շատ
8 օրեր ապրիք ։ Ու մեր հօրը Ռե-
քաբի որդւոյն Յովնադաբին բոլոր
մեզի հրամայածին պէս՝ անոր խօս-
քը մտիկ ընելով՝ մեր բոլոր օրե-
րուն մէջ՝ մենք , մեր կնիկները , մեր
տղաքները ու մեր աղջիկները գինի
9 չենք խմեր . Եւ բնակելու համար
տուներ չենք շիներ , ու այգի և ա-
գարակ՝ ու սերմ չենք ստանար .
10 Հապա վրաններու մէջ կը բնա-
կինք , ու հնազանդութիւն ընելով՝
մեր հօրը Յովնադաբին բոլոր հը-
րամայածը 'ի գործ կը դնենք .
11 Բայց երբոր Բաբելոնի Նաբուգո-
դոնոսոր թագաւորը [զ]երկիրը ե-
լաւ , ըսինք . Եկէ՛ք , Քաղդէա-
ցւոց զօրքին երեսէն , ու Ասորւոց
զօրքին երեսէն Երուսաղէմ եր-
թանք . այսպէս Երուսաղէմի մէջ
կը բնակինք ։
12 Եւ Տէրոջը խօսքը Երեմիային
13 եղաւ՝ ըսելով . Զօրաց Տէրը՝ Իս-
րայէլին Աստուածը այսպէս կ'ըսէ .
Գնա՛ , Յուդայի մարդիկներուն ու
Երուսաղէմի բնակիչներուն ըսէ՛ .

Ն. ք. գ. Յ. Իրր 590
Ն Գլ. Թ. 11 ։ Խդ. 2, 6 ։
Իրր 607
ա Դ Թագ. Ժ. 15 ։ ա Մն. բ. 55 ։
բ Գ Թագ. Զ. 5 ։
գ Դ Թագ. Ժբ. 9 ։ Իե. 18 ։ ա Մն. Թ. 18, 19 ։
դ Դ Թագ. Ժ. 15 ։
ե Ել. Ի. 12 ։ Եփս. Զ. 2, 3 ։

իմ խօսքերս մտիկ ընելու համար
[է]խրատ չէ՞ք ընդունիր , կ'ըսէ Տէրը ։
14 Ռեքաբի որդւոյն Յովնադաբին՝ իր
որդւոցը գինի չխմելու համար պա-
տուիրած խօսքերը հաստատ պա-
հուեցան . վասն զի իրենց հօրը հը-
րամանին հնազանդութիւն ընելով ,
մինչև աս օրս չեն խմեր . [ը]բայց թէև
ես ձեզի խօսեցայ՝ կանուխ ելլելով
ու խօսելով , սակայն ինծի մտիկ
15 չըրիք , [թ]Եւ իմ բոլոր ծառաներս
մարգարէները ձեզի ղրկեցի՝ կանուխ
ելլելով ու ղրկելով , ու ըսի .
[ժ]Ամէն մարդ իր չար ճամբայէն
դառնայ , և բարի գործքեր ըրէք ,
ու օտար աստուածներու ետևէ մի՛
երթաք՝ որ անոնց ծառայութիւն
ընէք , որպէս զի ձեզի ու ձեր հայ-
րերուն տուած երկրիս մէջը բնա-
կիք . բայց ձեր ականջը չծռեցիք ,
16 ու ինծի մտիկ չըրիք ։ Եւ Ռեքա-
բի որդւոյն Յովնադաբին որդիքը՝
իրենց հօրը պատուիրած հրամանը
հաստատ պահեցին . բայց աս ժո-
17 ղովուրդը ինծի մտիկ չըրաւ ։ Ա-
նոր համար զօրաց Տէր Աստուածը՝
Իսրայէլին Աստուածը այսպէս կ'ը-
սէ . Ահա՛ ես Յուդային , ու Երու-
սաղէմի բոլոր բնակիչներուն վրայ
պիտի բերեմ ան բոլոր չարիքը՝ որ
անոնց համար խօսեր էի . [ի]վասն զի
անոնց խօսեցայ , բայց մտիկ չըրին ,
ու անոնց կանչեցի , բայց պատաս-
խան չտուին ։
18 Ու Երեմիա՝ Ռեքաբեանց տանը
ըսաւ . Զօրաց Տէրը՝ Իսրայէլին
Աստուածը այսպէս կ'ըսէ . Որով-
հետև ձեր հօրը Յովնադաբին պա-
տուէրը մտիկ ըրիք , ու անոր բո-
լոր հրամանները պահեցիք , և ձե-
զի ամէն պատուիրածին պէս ըրիք .
19 Անոր համար զօրաց Տէրը՝ Իսրա-
յէլին Աստուածը այսպէս կ'ըսէ .
Ռեքաբեան Յովնադաբէն՝ միշտ
[լ]իմ առջևս կայնող մարդ պակաս
պիտի չըլլայ ։

## ԳԼ. ԼԶ

1 Երեմիա իր մարգարէութիւնը գրել կու տայ
Բարուքին , 5 և հրապարակաւ կարդալ կու
տայ ։ 11 Իշխանները Միքիային միջոցովը կ'ի-
մանան աս բանը , և Յուդին կը ղրկեն որ բե-
րէ ան գրուածը , ու զանիկայ կը կարդան ։ 19
Կ'ուզեն որ Բարուքը ու Երեմիան պահուին ։
20 Յովակիմ թագաւորը աս մարգարէութեա-
նը մէկ մասը մտիկ կ'ընէ , ու տոմսը այրել կու
տայ ։ 27 Երեմիա անոր դատաստանը կը ծա-
նուցանէ ։ 32 Բարուք մէկ նոր օրինակ մը կը
գրէ ։

1 Ու եղաւ որ Յուդայի թագաւորին
Յովսիայի որդւոյն Յովակիմին
չորրորդ տարին՝ Տէրոջը կողմանէ
աս խօսքը եղաւ Երեմիային , ըսե-
2 լով . Քեզի [ա]մէկ գիրքի տոմս մը
առ , ու [բ]անոր վրայ գրէ ան բոլոր

Ն. ք. գ. Յ. Իրր 607
է Գլ. Լբ. 33 ։
ը Բ Մն. Լզ. 15 ։ Գլ. Է. 13 ։ Իե. 3 ։
թ Գլ. Է. 25 ։ Իե. 4 ։
ժ Գլ. Ժը. 11 ։ Իե. 5, 6 ։
ի Առակ. Ա. 24 ։ Եսա. Կե. 12 ։ Կզ. 4 ։ Գլ. Է. 13 ։
լ Գլ. Ժե. 19 ։
ա Եսա. Ը. 1 ։ Եզեկ. Բ. 9 ։ Զաք. Ե. 1 ։
բ Գլ. Լ. 2 ։

Ն. Ք. Գ. Տ. Իրր 607

գ Գլ. ԻԵ. 3։
դ Գլ. ԻԵ. 15, ԷՒ.
ե Հմր 7, Գլ. ԻԶ. 3։
զ Գլ. ԺԸ. 8։ Յովն. Գ. 8։
է Գլ. ԼԲ. 12։
ը Տես Գլ. ԽԵ. 1։
թ Ղև. ԺԶ. 29։ ԻԳ. 27—32։ Գործ. ԻԷ. 9։
ժ Հմր 3։ * Եբր. անոնց աղօթ. քը Տէրոջը առջևը իյնայ։
Իրր 606
ի Գլ. ԻԶ. 10։

խօսքերը՝ որ քեզի հետ խօսելու
սկսած օրէս՝ գՑովսիայի օրերէն
մինչև աս օրս Իսրայէլի վրայով, ու
Յուդայի վրայով, և դ բոլոր ազգե-
3 րուն վրայով խօսեցայ։ եԿարելի է
որ Յուդայի տունը լսէ ան բոլոր
չարիքը՝ որ ես կը մտածեմ անոնց
ընելու, որպէս զի զամէն մարդ իր
չար ճամբայէն դառնայ, և ես ա-
նոնց անօրէնութիւնը ու մեղքը նե-
րեմ։
4 Ու Երեմիա էՆերիայի որդին
Բարուքը կանչեց. և ըԲարուք՝ Ե-
րեմիային բերնէն՝ Տէրոջը անոր
ըսած բոլոր խօսքերը ան գիր-
5 քի տոմսին վրայ գրեց։ Ու
Երեմիա՝ Բարուքին պատուի-
րեց ու ըսաւ. Ես «» փեղկ» ար-
գիլուած եմ. Տէրոջը տունը
6 երթալու կարող չեմ. Ուստի
դուն երթաս, ու թծոմապահու-
թեան օրը Տէրոջը տանը մէջ ժո-
ղովուրդին ականջներուն իմ բեր-
նէս գրած տոմսէդ Տէրոջը խօսքե-
րը կարդաս, ու նաև իրենց քա-
ղաքներէն եկող բոլոր Յուդային
ականջներուն զանոնք կարդաս.
7 ժԳուցէ *Տէրոջը առջևը իյնալով
աղօթք ընեն", և ամէն մարդ իր
չար ճամբայէն դառնայ. քանզի
մեծ է ան բարկութիւնը ու սրտմը-
տութիւնը որ Տէրը աս ժողովուր-
8 դին համար խօսեցաւ։ Ու Նե-
րիայի որդին Բարուք Երեմիա
մարգարէին բոլոր իրեն հրամայա-
ծին պէս ըրաւ, և ան գիրքէն Տէ-
րոջը խօսքերը կարդաց Տէրոջը
տանը մէջ։
9 Ու եղաւ որ Յուդայի թագաւո-
րին Յովսիայի որդւոյն Յովակիմին
հինգերորդ տարին՝ իններորդ ամի-
սը՝ բոլոր Երուսաղէմի ժողովուր-
դին, ու Յուդայի քաղաքներէն
Երուսաղէմ եկող բոլոր ժողո-
վուրդին՝ Տէրոջը առջևը ծոմապա-
10 հութիւն քարոզեցին։ Եւ Բա-
րուք՝ Սափան դպիրին որդւոյն
Գամարիային սենեակը՝ Տէրոջը
տանը իՆոր դրանը մուտքը՝ վերի
գաւիթին մէջ բոլոր ժողովուրդին
ականջներուն՝ ան գիրքէն Երեմիա-
յին խօսքերը կարդաց։
11 Եւ Սափանի որդւոյն Գամարիա-
յին որդին Միքիան, երբոր գիր-
քէն Տէրոջը բոլոր խօսքերը լսեց,
12 Թագաւորին տունը՝ դպիրին սե-
նեակը իջաւ. և ահա բոլոր իշխան-
ները՝ Եղիսամա դպիրը, ու Սեմա-
յիայի որդին Դաղայիան, ու Ա-
քորորի որդին Եղնաթանը, և Սա-
փանի որդին Գամարիան, ու Ա-
նանիայի որդին Սեդեկիան, և բո-
լոր իշխանները հոն նստեր էին։

Ն. Ք. Գ. Տ. Իրր 606
լ Տես Ամով. Գ. 15։
խ Գ Թագ. ԻԲ. 11։ Եսա. ԼԶ. 22։ ԼԷ. 1։

13 Ու Միքիա անոնց պատմեց ան բո-
լոր խօսքերը որ լսեր էր, երբոր
Բարուք ժողովուրդին ականջնե-
14 րուն ան գիրքէն կը կարդար։ Եւ
բոլոր իշխանները՝ Քուսիի որդւոյն
Սեղեմիայի որդւոյն Նաթանիային
որդին Յուդին՝ Բարուքին խրկե-
ցին՝ ըսելով. Ժողովուրդին ա-
կանջներուն կարդացած տոմսդ
ձեռքդ առ, ու հո՛ս եկուր. ուստի
Ներիայի որդին Բարուք տոմսը
ձեռքը առաւ, ու անոնց գնաց։
15 Եւ անոնք ըսին անոր. Կ՚աղաչենք
նստէ, ու մեր ականջներուն ալ
կարդա զանիկայ։ Եւ բարուք ա-
16 նոնց ականջներուն կարդաց։ Ու
երբոր ան բոլոր խօսքերը լսեցին,
վախով իրարու կը նայէին. ու
Բարուքին ըսին. Անշուշտ աս
բոլոր խօսքերը թագաւորին պիտի
17 պատմենք։ Եւ Բարուքին հար-
ցուցին ու ըսին. Շնորհք ըրէ՝
պատմէ՝ մեզի թէ ինչպէս գրեցիր
18 աս խօսքերը անոր բերնէն։ Եւ
Բարուք անոնց ըսաւ. Աս խօսքե-
րուն ամէնը անիկայ ինծի բերնով
արտասանեց, ու ես զանոնք մելա-
19 նով «» գրքիս մէջը գրեցի։ Ան
ատենը իշխանները Բարուքին ը-
սին. Գնա պահուըտէ՝ թէ դուն և
թէ Երեմիան, և ուր ըլլալնիդ
մարդ չգիտնայ։
20 Ու անոնք սրահը թագաւորին
մտան. բայց տոմսը Եղիսամա դը-
պիրին սենեակին մէջ պահեր էին.
և «» բոլոր խօսքերը թագաւորին
21 ականջներուն պատմեցին։ Եւ
թագաւորը խրկեց Յուդին որ ան
տոմսը առնէ. ու զանիկայ Եղիսա-
մա դպիրին սենեակէն առաւ. և
Յուդին զանիկայ՝ թագաւորին ա-
կանջներուն ու թագաւորին քովը
կայնող բոլոր իշխաններուն ա-
22 կանջներուն կարդաց։ Եւ իՆն-
երորդ ամիսը ըլլալով՝ թագաւորը
լձմերատանը մէջ նստած էր, ու
առջևը վառած կրակարան կար։
23 Ու երբոր Յուդի իրեք կամ չորս
երես կարդաց, զանիկայ գմելինով
կտրեց, ու կրակարանին կրակին
մէջը նետեց. մինչև որ բոլոր տոմսը
կրակարանին կրակին մէջը հատաւ։
24 Եւ թագաւորը ու անոր բոլոր
ծառաները՝ որոնք աս բոլոր խօս-
քերը կը լսէին, չվախցան, ոչ ալ
25 խհանդերձնին պատռեցին. Թէ-
պէտև Եղնաթանը, Դաղայիան ու
Գամարիան թագաւորին աղաչեցին
որ տոմսը չայրէ, բայց անոնց մտիկ
26 չըրաւ։ Եւ թագաւորը՝ թագա-
ւորի որդւոյն Յերամէլին, ու Եզ-
րիէլի որդւոյն Սարայիային, ու Աբ-
դիէլի որդւոյն Սեղեմիային հրամա-

Ն. Ք. Դ. Ք. Իրր 606
յեց, որ Բարուք դպիրը ու Երեմիա
մարգարէն բռնեն . բայց Տէրը զա-
նոնք պահեց ։
Իրր 605
27 Եւ թագաւորը այն տոմսը, ու
Երեմիայի բերնէն Բարուքին գրած
խօսքերը այրելէն ետքը, Տէրոջը
խօսքը եղաւ Երեմիային՝ ըսելով .
28 Նորէն գնա՛, քեզի մէկ ուրիշ տոմս
մը առ, ու անոր վրայ գրէ՛ այն բո-
լոր առջի խօսքերը՝ որ Յուդայի
Յովակիմ թագաւորին այրած առ-
29 ջի տոմսին մէջը կային ։ Եւ Յու-
դայի Յովակիմ թագաւորին ըսէ .
Տէրը այսպէս կ'ըսէ . Դուն աս
տոմսը այրեցիր, ըսելով թէ՝ Ին-
չո՞ւ համար անոր վրայ գրեցիր թէ՝
Բաբելոնի թագաւորը անպատճառ
պիտի գայ, ու աս երկիրը պիտի
աւրէ, և անկէ մարդը ու անասու-
նը պիտի վերցընէ ։
30 Անոր համար Տէրը՝ Յուդայի Յո-
վակիմ թագաւորին վրայով այս-
ծ Գլ. ԻԲ. 30. — պէս կ'ըսէ . [ծ]Անիկայ՝ Դաւիթի
աթոռին վրայ նստող մարդ պիտի
չունենայ . և անոր մեռելը ցորեկը
տաքի մէջ՝ ու գիշերը ցուրտի մէջ
է Գլ. ԻԲ. 19. — 31 [է]պիտի ձգուի ։ Ու անոր և անոր
սերունդին ու անոր ծառաներուն
ը Գլ. ԻԳ. 34. — [ը]հայցելութիւն պիտի ընեմ իրենց
անօրէնութեանը համար . և անոնց
վրայ, ու Երուսաղէմի բնակչացը
վրայ, ու Յուդայի մարդոցը վրայ
պիտի բերեմ այն ամէն չարիքը որ
* Կամ՝ անոնց համար — *անոնց խօսեցայ, և անոնք մտիկ
չըրին ։
32 Ու Երեմիա մէկ ուրիշ տոմս մը
առաւ, ու զանիկայ Ներիայի որ-
դւոյն Բարուք դպիրին տուաւ . և
անիկայ անոր վրայ Երեմիային բեր-
նէն՝ Յուդայի Յովակիմ թագա-
ւորին կրակով այրած գիրքին բոլոր
խօսքերը գրեց . ու անոնց վրայ՝
անոնց պէս ուրիշ շատ խօսքեր ա-
ւելցաւ ։

## ԳԼ. ԼԷ

1 Երբոր Քաղդէացիք Եգիպտացւոց սպառնալովը Երուսաղէմը պաշարելէն ետ կը քաշուին, Սեդեկիա թագաւորը լուր կը խրկէ Երեմիային՝ որ ժողովուրդին համար աղօթք ընէ ։ 6 Երեմիա կը մարգարէանայ թէ Քաղդէացիք անշուշտ պիտի դառնան և յաղթութիւն ընեն . 11 ինքը իրբև փախստական կը բռնուի, կը ծեծուի ու բանտը կը դրուի . 16 կը հաստատէ թէ Սեդեկիան գերի պիտի տարուի . 18 իր ազատութեանը համար աղաչանք կ'ընէ, ու քիչ մը հանգստութիւն կը շնորհուի իրեն ։

Իրր 599
ա Դ Թագ. ԻԴ. 17. Բ Մն. ԼԶ. 10. Գլ. ԻԲ. 24. ԽԲ.
բ Բ Մն. ԼԶ. 12, 14.
1 Ու Յովսիայի որդին [ա]Սեդեկիա
թագաւորը՝ Յովակիմի որդւոյն
Յեքոնիային տեղը թագաւորեց,
որն, որ Բաբելոնի Նաբուգոդոնոսոր
թագաւորը Յուդայի վրայ թա-
2 գաւոր դրաւ ։ [բ]Բայց անիկայ՝ ու
անոր ծառաները ու երկրին ժողո-
վուրդը՝ Տէրոջը Երեմիա մարգա-
րէին ձեռքովը խօսած խօսքերը — Ն. Ք. Դ. Ք. Իրր 599
մտիկ չըրին ։
3 Ու Սեդեկիա թագաւորը՝ Սե- — 590
ղեմիային որդին Յուքաղը՝ ու Մա-
ասիայի որդին [գ]Սոփոնիա քահա- — գ Գլ. ԻԱ. 1. ԻԹ. 25. ԾԲ. 24.
նան՝ Երեմիա մարգարէին խրկեց,
ըսելով . Շնորհք ըրէ՝ մեզի համար
մեր Տէր Աստուծոյն աղօթք ըրէ ։
4 Այն ժամանակը Երեմիա ժողովուր-
դին մէջ կը մտնէր կ'ելլէր . ու զա-
նիկայ դեռ բանտը դրած չէին ։
5 Ու Եգիպտոսէն [դ]Փարաւոնին զօր- — դ Տես Դ Թագ. ԻԴ. 7. Եզեկ. ԺԷ. 15.
քը ելաւ . [ե]ու Երուսաղէմը պա-
շարող Քաղդէացիները երբոր ա-
նոնց լուրը լսեցին, Երուսաղէմին — ե Հմր 11. Գլ. ԼԴ. 21.
վրայէն քաշուեցան ։
6 Եւ Տէրոջը խօսքը Երեմիա մար-
7 գարէին եղաւ, ըսելով . Իսրայէ-
լին Տէր Աստուածը այսպէս կ'ըսէ .
Ինծի հարցընելու համար [զ]ձեզ — զ Գլ. ԻԱ. 2.
ինծի խրկող Յուդայի թագաւորին
այսպէս ըսէք . Ահա ձեզի օգնու-
թեան համար ելլող Փարաւոնի
զօրքը իր երկիրը Եգիպտոս պիտի
8 դառնայ . [է]Ու Քաղդէացիք պիտի — է Գլ. ԼԴ. 22.
դառնան, և աս քաղաքիս դէմ
պատերազմ պիտի ընեն . ու զա-
նիկայ պիտի առնեն, և զանիկայ
9 կրակով այրեն ։ Տէրը այսպէս կ'ը-
սէ . Մի՛ խաբէք ձեր անձերը, ը-
սելով թէ՝ Քաղդէացիք անշուշտ
մեզմէ պիտի երթան . վասն զի
10 պիտի չերթան . [ը]Քանզի թէև ձե- — ը Գլ. ԻԱ. 4. 5.
զի հետ պատերազմ ընող Քաղդէ-
ացւոց բոլոր զօրքը զարնէք, ու
անոնցմէ միայն մէկ քանի վիրաւո-
րուած մարդիկ մնան, անոնց ամէն
մէկը իր վրանէն ելլելով՝ աս քաղա-
քը կրակով պիտի այրեն ։
11 [թ]Ու երբոր Քաղդէացւոց զօրքը՝ — թ Հմր 5.
Փարաւոնի զօրքին պատճառաւը՝
Երուսաղէմի վրայէն քաշուեցան .
12 Երեմիա Երուսաղէմէն ելաւ որ
Բենիամինի երկիրը երթայ, ու
անկէ ժողովրդեան մէջը իր բաժինը
13 առնէ ։ Ու երբոր անիկայ Բե-
նիամինի դուռն էր, հոն Անանիայի
որդւոյն Սեղեմիայի որդին՝ Յերիա
անունով ոստիկան մը կար . և ա-
նիկայ Երեմիա մարգարէն բռնեց ու
ըսաւ . Դուն Քաղդէացւոց կողմը
14 կ'անցնիս ։ Ու Երեմիա ըսաւ .
Սուտ է, ես Քաղդէացւոց կողմը
չեմ անցնիր . բայց անիկայ անոր
մտիկ չըրաւ . ու Յերիա բռնեց
Երեմիան, ու զանիկայ իշխաննե-
15 րուն տարաւ ։ Եւ իշխանները Ե-
րեմիային սրդողեցան, ու զանիկայ
ծեծեցին, [ժ]և բանտարկեցին Յով- — ժ Գլ. ԼԸ. 26.
նաթան դպիրին տանը մէջ . վասն
զի այն տունը բանտ ըրեր էին ։
16 Երբոր Երեմիա [ի]բանտը ու խուլ- — ի Գլ. ԼԸ. 6.
ցերուն մէջը մտաւ, ու հոն շատ

Ն․ Ք․ ՂՔ․ 589

17 տուն նստաւ , Սեդեկիա թագա-
ւորը ծածուկ խրկեց՝ զանիկայ առաւ ,
և թագաւորը իր տանը մէջ գաղ-
տուկ անոր հարցուց , ու ըսաւ ․
Արդեօք Տէրոջմէ մէկ խօսք մը կա՞յ ։
Ու Երեմիա ըսաւ , Կայ ․ նաև
ըսաւ ․ Դուն Բաբելոնի թագա-
18 ւորին ձեռքը պիտի տրուիս ։ Ու
Երեմիա ըսաւ Սեդեկիա թագա-
ւորին ․ Քեզի , կամ ծառանե-
րուդ , կամ աս ժողովուրդին դէմ
ի՞նչ մեղք գործեցի որ զիս բանտը
19 դրիք ։ Եւ ո՞ւր են ձեր մարգարէ-
ները , որ ձեզի մարգարէութիւն
ըրին , ու ըսին ․ Բաբելոնի թա-
գաւորը ձեր վրայ , ու աս երկրիս
20 վրայ պիտի չգայ ։ Եւ հիմա կ'ա-
ղաչեմ՝ ով տէր իմ թագաւոր ,
մտիկ ըրէ , թող իմ աղաչանքս
քու առջևդ ընդունելի՛ ըլլայ ․ ու
զիս Յովնաթան դպիրին տունը ետ
21 մի՛ խրկեր , որ հոն չմեռնիմ ։ Եւ
Սեդեկիա թագաւորը հրամայեց ,
ու Երեմիան Նբանտին գաւիթը դը-
րին ․ ու ամէն օր հացագործներուն
փողոցէն՝ մէյմէկ նկանակ հաց կու
տային անոր , Էմինչև որ քաղաքին
հացը բոլորովին հատաւ ․ ու Ե-
րեմիա բանտին գաւիթին մէջը կը
նստէր ։

Ն Գւ․ ԼԲ․ 2 ։ ԼԸ․ 13, 23 ։
Է Գւ․ ԼԸ․ 9 ։ Ծբ․ 6 ։

## ԳԼ․ ԼԸ

1 Երեմիա՝ մէկ սուտ բարուրանքով մը Մեղքիա-
յին գուբը կը ձգուի ․ 7 Աբդեմելէք աղաչան-
քով մը ազատութիւն կը ստանայ անոր հա-
մար ։ 14 Երեմիա գաղտնի խօսակցութիւն
ընելով թագաւորին հետ , կը յորդորէ զանի-
կայ որ հնազանդի Քաղդէացւոց , ու իր կեան-
քը ազատէ ․ 24 Թագաւորին պատուէրին հա-
մեմատ՝ իշխաններէն կը պահէ իրենց ըրած
գաղտնի խօսակցութիւնը ։

1 Եւ Մատթանի որդին Սափա-
տիա , ու Փասուրի որդին
Գոդողիա և Սեղեմիայի որդին
Ա Յուքաղ , ու Մեղքիայի որդին
Բ Փասուր՝ Գ Երեմիային բոլոր ժո-
ղովրդեան հետ խօսած խօսքերը
2 լսեցին , որ ըսաւ ․ Տէրը այսպէս
կ'ըսէ ․ Դ Աս քաղաքիս մէջ կեցողը՝
սրով , սովով ու ժանտախտով
պիտի մեռնի ․ իսկ Քաղդէացւոց
ելլողը ողջ պիտի մնայ ․ և անոր
կեանքը իրեն աւարի մը պէս պիտի
3 ըլլայ , ու պիտի ապրի ։ Տէրը
այսպէս կ'ըսէ ․ Ե Աս քաղաքը ան-
պատճառ Բաբելոնի թագաւորին
զօրքին ձեռքը պիտի տրուի , ու
4 զանիկայ պիտի առնէ ։ Եւ իշ-
խանները թագաւորին ըսին ․ Կ'ա-
ղաչենք , Զ Թող աս մարդը մեռ-
ցուի ․ ինչու որ աս քաղաքիս մէջ
մնացած պատերազմական մարդոց
ձեռքերը , ու բոլոր ժողովուրդին
ձեռքերը կը թուլցնէ՝ անոնց ա-
սանկ խօսքեր խօսելով ․ վասն զի

Ա Գւ․ ԼԷ․ 3 ։
Բ Գւ․ Իա․ 1 ։
Գ Գւ․ Իա․ 8 ։
Դ Գւ․ Իա․ 9 ։
Ե Գւ․ Իա․ 10 ։ ԼԲ․ 3 ։
Զ Տես Գւ․ Իզ․ 11 ։

Ն․ Ք․ ՂՔ․ իբր 589

աս մարդը աս ժողովուրդին խա-
ղաղութիւնը չփնտռեր , հապա ա-
5 նոր չարիքը ։ Եւ Սեդեկիա թա-
գաւորը ըսաւ ․ Ահա անիկայ ձեր
ձեռքն է ․ որովհետև թագաւորը
ձեր քովը կարողութիւն մը չունի ։
6 Է Ու Երեմիան առին , և զանիկայ
թագաւորի որդւոյն Մեղքիային
գուբը նետեցին , որ բանտին գա-
ւիթին մէջն էր ․ ու Երեմիան
չուաններով իջեցուցին ․ և ան
գուբին մէջը ջուր չկար , հապա
մինակ տիղմ ․ ու Երեմիա տիղմին
մէջը կ'ընկղմէր ։
7 Ը Եւ թագաւորին տունը եղող
Եթէովպացի ներքինին Աբդեմելէք
լսեց որ Երեմիան գուբը ձգեցին ․
ու թագաւորը Բենիամինի դուռը
8 կը նստէր ։ Եւ Աբդեմելէքը թա-
գաւորին տունէն ելաւ , ու թա-
9 գաւորին խօսեցաւ , ու ըսաւ ․ Ո՛վ
տէր իմ թագաւոր՝ աս մարդիկնե-
րը դէշ ըրին՝ ամէն ինչ որ Երեմիա
մարգարէին ըրին՝ զանիկայ գուբը
նետելով ․ քանզի քաղաքիս մէջ
հաց չգտնուելուն համար՝ անիկայ
իր տեղը անօթութենէն *պիտի
10 մեռնի ։ Եւ թագաւորը Եթէով-
պացի Աբդեմելէքին հրամայեց ու
ըսաւ ․ Ասկէ քեզի հետ երեսուն
մարդ առ , ու Երեմիա մարգարէն
գուբէն հանէ , քանի որ մեռած
11 չէ ։ Եւ Աբդեմելէք իր հետը ա-
ռաւ մարդիկները , ու թագաւորին
տունը՝ շտեմարանին տակը գնաց ,
և անկէ պատռած լաթեր ու հին
լաթեր առաւ , և զանոնք չուաննե-
րով գուբը Երեմիային իջեցուց ։
12 Ու Եթէովպացի Աբդեմելէքը Ե-
րեմիային ըսաւ ․ Աս պատռած ու
հին լաթերը թևերուդ տակը՝
չուաններուն տակէն դիր ․ ու Երե-
13 միա այնպէս ըրաւ ։ Թ Ու Երեմիան
չուաններով քաշեցին , և զանիկայ
գուբէն դուրս հանեցին ․ ու Երե-
միա Ժ բանտին գաւիթին մէջը նըս-
տաւ ։
14 Եւ Սեդեկիա թագաւորը ծածուկ
խրկեց՝ ու Երեմիա մարգարէն իր
քովը առաւ Տէրոջը տունը եղող
երրորդ մուտքը ․ և թագաւորը
Երեմիային ըսաւ ․ Քեզի մէկ բան
մը պիտի հարցընեմ , ինծմէ բան
15 մի՛ պահեր ։ Ու Երեմիա ըսաւ
Սեդեկիային ․ Թէ որ քեզի պատ-
մեմ , չէ՞ որ զիս անշուշտ պիտի
մեռցընես ․ և թէ որ քեզի խրատ
տամ , ինծի մտիկ պիտի չընես ։
16 Բայց Սեդեկիա թագաւորը Երե-
միային գաղտուկ երդում ըրաւ , ու
ըսաւ ․ ԻՄեզի աս հոգին ստեղծող
Տէրը կենդանի է՝ որ քեզ պիտի
չմեռցընեմ , և քեզ պիտի չմատ-

Է Գւ․ ԼԷ․ 21 ։
Ը Գւ․ ԼԹ․ 16 ։
* Կամ՝ ուրեկնէ մեռ-նի ։
Թ Տես Հմր 6 ։
Ժ Գւ․ ԼԷ․ 21 ։
Ի Ես․ ԾԷ․ 16 ։

Ն. Ք. ԳՃ.
589

նեմ աս մարդիկներուն ձեռքը՝ ո-
17 րոնք քու հոգիդ կը փնտռեն ։ Ան
ատենը Երեմիա Սեդեկիային ըսաւ .
Զօրաց Տէր Աստուածը՝ Իսրայէլին
Աստուածը այսպէս կ՚ըսէ . Թէ որ
Բաբելոնի թագաւորին իշխաննե-
րուն ելլես , քու հոգիդ ողջ պիտի
մնայ . և աս քաղաքը կրակով պիտի
չայրի . հապա դուն ու քու տունդ
18 ողջ պիտի մնաք . Բայց թէ որ
Բաբելոնի թագաւորին իշխաննե-
րուն չելլես , ան ատենը աս քաղաքը
Քաղդէացւոց ձեռքը պիտի տրուի ,
ու զանիկայ կրակով պիտի այրեն .
և դուն անոնց ձեռքէն պիտի չա-
19 զատիս ։ Ու Սեդեկիա թագաւորը
Երեմիային ըսաւ . Քաղդէացւոց
կողմը անցած Հրէաներէն կը վախ-
նամ . չըլլայ որ զիս անոնց ձեռքը
տան , ու ինծի հետ անարգանօք
20 վարուին ։ Ու Երեմիա ըսաւ . Պի-
տի չտան . կ՚աղաչեմ՝ Տէրոջը խօս-
քը մտիկ ըրէ որ քեզի պիտի ըսեմ ,
որպէս զի քեզի աղէկ ըլլայ , ու քու
21 անձդ ապրի ։ Բայց թէ որ ելլել
չուզես , Տէրոջը ինծի ցուցուցած
22 բանը աս է . Ահա Յուդայի թագա-
ւորին տունը մնացած բոլոր կնիկ-
ները՝ Բաբելոնի թագաւորին իշ-
խաններուն պիտի տարուին . ու ան
կնիկները պիտի ըսեն . Քու բարե-
կամներդ քեզ հրապուրեցին , ու
քեզ յաղթեցին . ոտքերդ տիղմի
մէջ ընկղմելուն պէս՝ անոնք ետ
23 քաշուեցան ։ Եւ քու բոլոր կնիկ-
ներդ ու տղաքներդ Քաղդէացինե-
րուն պիտի հանեն . դուն ալ ա-
նոնց ձեռքէն պիտի չազատիս .
հապա Բաբելոնի թագաւորին ձեռ-
քովը պիտի բռնուիս . և դուն
*պատճառ պիտի ըլլաս որ աս քա-
24 ղաքը կրակով այրի" ։ Ու Սեդեկիա
ըսաւ Երեմիային . Աս խօսքերը
մարդ մը չիմանայ , ու դուն պիտի
25 չմեռնիս ։ Եւ թէ որ իշխանները
քեզի հետ խօսիլս լսեն ու քե-
զի գան , ու քեզի ըսեն . Հիմա
թագաւորին հետ ինչ խօսեցար՝
մեզի պատմէ . մեզմէ մի՛ պահեր ,
ու քեզ չենք մեռցըներ . և թա-
գաւորը քեզի հետ ի՞նչ խօսեցաւ .
26 Ան ատենը անոնց ըսես . Ես թա-
գաւորին առջեւ աղաչանք ըրի , որ
զիս Յովնաթանին տունը ետ
27 չխրկէ , որ հոն մեռնիմ . Եւ բոլոր
իշխանները Երեմիային եկան , ու
անոր հարցուցին . և անոնց պատ-
մեց աս ամէն խօսքերուն համեմատ՝
որ թագաւորը պատուիրեր էր . ու
անոր խօսելէն դադրեցան . վասն
28 զի բանը չյայտնուեցաւ ։ Ու Ե-
րեմիա բանտին գաւիթին մէջը կը
նստէր՝ մինչև Երուսաղէմին առ-

Գլ. ԼԹ. 3 ։
Դ Թագ. ԻԴ. 12 ։
Գլ. ԼԲ. 4 ։ ԼԴ. 3 ։ Հմր 23 ։
Ա Թագ. ԼԱ. 4 ։
Գլ. ԼԹ. 6 ։ ԽԱ. 10 ։ Հմր 18 ։
* Եբր. աս քաղաքը կրակով պիտի այրես ։
Գլ. ԼԷ. 20 ։
Գլ. ԼԷ. 15 ։
Գլ. ԼԷ. 21 ։ ԼԹ. 14 ։

նուած օրը . ու երբոր Երուսաղէ-
մը առնուեցաւ , անիկայ հոն էր ։

## ԳԼ. ԼԹ

1 Երուսաղէմը կ՚առնուի ։ 4 Սեդեկիային աչ-
քերը կը կուրացնեն , ու Բաբելոն կը տանին ։
8 Քաղաքը կը կործանի ։ 9 Ժողովուրդը գերի
կը տարուի ։ 11 Նաբուգոդոնոսոր պատուէր
կու տայ որ Երեմիային աղէկ խնամք ընեն ։
15 Աստուծոյ խոստմունքը Աբդեմելէքին ։

1 Յուդայի Սեդեկիա թագաւորին
իններորդ տարին տասներորդ
ամիսը՝ Բաբելոնի Նաբուգոդոնո-
սոր թագաւորը իր բոլոր զօրքովը
Երուսաղէմ եկաւ . ու զանիկայ
2 պաշարեցին ։ Սեդեկիային մետա-
սաներորդ տարին չորրորդ ամիսը՝
ամսուն իններն քաղաքին պարիսպը
3 ճեղքուեցաւ ։ Եւ Բաբելոնի թա-
գաւորին բոլոր իշխանները՝ այ-
նոք Ներգեղսարասար , Սամեգար-
նաբաւ , †Սարսեքիմ Ներքինապե-
տը , Ներգեղսարասար մոգպետը" ,
ու Բաբելոնի թագաւորին բոլոր
մնացած իշխանները եկան միջին
դուռը նստան ։
4 Ու երբոր Յուդայի Սեդեկիա
թագաւորը , ու բոլոր պատերազ-
մական մարդիկները զանոնք տե-
սան , փախան , ու քաղաքէն՝ գի-
շերով թագաւորին պարտէզին
ճամբայովը երկու պարսպին մէջի
դռնէն ելան . ու դաշտի ճամ-
5 բան ելաւ ։ Եւ Քաղդէացւոց զօր-
քը անոնց ետևէն ինկան , ու Երի-
քովի դաշտերուն մէջ Սեդեկիա-
յին հասան , և զանիկայ բռնեցին ,
ու Եմաթի երկիրը Ռեբղայի մէջ՝
Բաբելոնի Նաբուգոդոնոսոր թա-
գաւորին առջեւը հանեցին , որ ա-
6 նոր դատաստանը տեսաւ ։ Եւ
Բաբելոնի թագաւորը Ռեբղայի
մէջ՝ Սեդեկիային տղաքը անոր աչ-
քերուն առջեւը մորթեց . ու Բա-
բելոնի թագաւորը՝ Յուդայի բոլոր
7 ազնուականները մորթեց ։ Եւ
Սեդեկիային աչքերը կուրացուց .
ու զանիկայ շղթաներով կապեց .
8 որ Բաբելոն տանի ։ Եւ Քաղ-
դէացիք կրակով այրեցին թա-
գաւորին տունը . ու ժողովուրդին
տուները , ու Երուսաղէմին պա-
9 րիսպները փլցուցին ։ Եւ Նաբու-
զարդան դահճապետը քաղաքին
մէջ մնացած ժողովուրդին մնա-
ցորդը , ու իրեն ինկող փախստա-
կանները , և ժողովուրդին ուրիշ
մնացորդները Բաբելոն գերի տա-
10 րաւ ։ Ու Նաբուզարդան դահճա-
պետը՝ Յուդայի երկրին մէջ թո-
ղուց ժողովուրդին աղքատներէն՝
որոնք բան մը չունէին . և նոյն օրը
անոնց այգիներ ու արտեր տուաւ ։
11 Ու Բաբելոնի Նաբուգոդոնոսոր

Ն. Ք. ԳՃ.
589
590
Դ Թագ. ԻԵ. 1—4 ։ Գլ. ԾԲ. 4—7 ։
588
Գլ. ԼԸ. 17 ։
† Կամ՝ Սարսեքիմ , Ռաբսարիս , Ներգեղսարասար , Ռաբմագ ։
Դ Թագ. ԻԵ. 4 , ևն ։ Գլ. ԾԲ. 7 , ևն ։
Գլ. ԼԲ. 4 ։ ԼԸ. 18 , 23 ։
Դ Թագ. ԻԳ. 33 ։
Եզեկ. ԺԲ. 13 ։ Գլ. ԼԲ. 4 ։
Դ Թագ. ԻԵ. 9 ։ Գլ. ԼԸ. 18 ։ ԾԲ. 13 ։
Դ Թագ. ԻԵ. 11 , ևն ։ Գլ. ԾԲ. 15 , ևն ։
Հմր 10 ։ 11 ։ ևն . Տես Ծն. ԼԷ. 36 ։

Ն. ք. գ. 588

Թագաւորը՝ Երեմիային համար՝
Նաբուզարդան դահճապետին պա-
12 տուիրեց ու ըսաւ. Զանիկայ առ,
և աչքդ անոր վրայ ըլլայ, ու անոր
ամենևին չարիք մի՛ հասցըներ.
հապա ինչ որ քեզի ըսէ, անոր
13 այնպէս ըրէ։ Եւ Նաբուզարդան
դահճապետը, ու Նաբուսազբան
ներքինապետը, ու Ներգեղսարա-
սար մոգպետը, և Բաբելոնի Թա-
գաւորին բոլոր նախարարները մարդ
Ժ Գլ. ԼԸ. 28. 14 խրկեցին, Ու Երեմիան բանտին
գաւիթէն առին, ու զանիկայ Սա-
Է Գլ. ԻԶ. 24. փանի որդւոյն Աքիկամի որդւոյն
Ը Գլ. Խ. 5. Գոդողիային տուին, որ զանիկայ
տունը տանի. ու անիկայ ժողո-
վուրդին մէջը բնակեցաւ։
15 Եւ Տէրոջը խօսքը եղաւ Երե-
միային, երբոր անիկայ բանտին
գաւիթին մէջը արգիլուած էր,
Խ Գլ. ԼԸ. 7. 12. 16 ըսելով. Գնա Եթէովպացի Աբ-
դեմելէքին խօսէ, ու ըսէ. Զօ-
րաց Տէրը՝ Իսրայէլին Աստուածը
այսպէս կ'ըսէ. Ահա ես աս քաղա-
Ծ Դան. Թ. 12. քիս վրայով ըսած խօսքերս 'ի
գործ պիտի դնեմ, չարիքի և ոչ
թէ բարիքի համար. ու ան օրը
քու աչքերուդ առջևը պիտի կա-
17 տարուին։ Եւ ան օրը քեզ պիտի
ազատեմ, կ'ըսէ Տէրը. ու պիտի
չտրուիս ան մարդիկներուն ձեռքը՝
որոնց երեսէն դուն կը վախնաս։
18 Վասն զի քեզ անշուշտ պիտի ա-
Կ Գլ. ԻԱ. 9. ԽԵ. 5. զատեմ. ու սրով պիտի չիյնաս.
Հ Մն. Ե. 20. Առակ. ԼԵ 40. և քու կեանքդ քեզի աւարի մը
պէս պիտի ըլլայ. քանզի ինծի
ապաւինեցար՝ կ'ըսէ Տէրը։

## ԳԼ. Խ

1 Երեմիա Նաբուզարդանէն ազատ թող տրուե-
լով Գոդողիային քով կ'երթայ. 7 Ցրուած
Հրեաներն ալ անոր քովը կը ժողվուին. 13
Յօհանան Իսմայէլին դաւաճանութիւնը կը
յայտնէ, բայց Գոդողիա անոր չհաւատար։

1 Ան խօսքը՝ որ Տէրոջը կողմանէ Ե-
րեմիային եղաւ Նաբուզարդան
դահճապետը զանիկայ Ռամայէն
Ա Գլ. ԼԹ. 14. արձակելէն ետքը. վասն զի Բա-
բելոն տարուելու Երուսաղէմի ու
Յուդայի բոլոր գերիներուն մէջ
զանիկայ ալ շղթաներով կապած
առեր էին։
2 Եւ դահճապետը Երեմիան առնե-
Բ Գլ. Ի. 7. լով, անոր ըսաւ. Քու Տէր Աս-
տուածդ աս տեղւոյս վրայ աս չա-
3 րիքը խօսած է. Ու Տէրը զանիկայ
բերաւ, ու իր ըսածին պէս ըրաւ.
Գ Օր. ԻԹ. 24. 25. Դան. Թ. 11. Քանզի Տէրոջը դէմ մեղք գործե-
ցիք, և անոր ձայնին մտիկ չըրիք.
4 ու աս բանը ձեզի եղաւ։ Եւ հիմա
ահա այսօր քու ձեռքերուդ շղթա-
Դ Գլ. ԼԹ. 12. ները քակեցի. Եթէ որ ինծի հետ
Բաբելոն երթալը քու աչքիդ առ-
ջևը աղէկ է՝ եկուր, ու իմ աչքս Ն. ք. գ. 588
քու վրադ պիտի ըլլայ. բայց թէ
որ ինծի հետ Բաբելոն երթալը քու
աչքիդ դէշ կ'երևնայ, զանց ըրէ.
ահա բոլոր երկիրը քու առջևդ է, Ե Ծն. Ի. 15.
ուր որ քեզի աղէկ ու հաճոյ կ'երև-
5 նայ երթալու, հոն գնա։ Ուստի
կամ Բաբելոնի Թագաւորին Յու- Զ Դ Թագ. ԻԵ. 22, 23.
դայի քաղաքներուն վրայ դրած
Սափանի որդւոյն Աքիկամին որդին
Գոդողիան դեռ ետ չդարձած՝ անոր
գնա, ու անոր հետ ժողովուրդին
մէջը բնակէ, և կամ ուր որ քեզի
աղէկ կ'երևնայ երթալու, հոն
գնա. ու դահճապետը անոր պա-
շարներ ու պարգև տուաւ, և զա-
6 նիկայ արձակեց։ Ու Երեմիա Է Գլ. ԼԹ. 14.
Մասփա գնաց Աքիկամի որդւոյն Ը Դատ. Ի. 1.
Գոդողիային, և անոր հետ՝ երկրին
մէջ մնացած ժողովուրդին մէջտե-
ղը բնակեցաւ։
7 Ու դաշտը եղող բոլոր զօրա- Թ Դ Թագ. ԻԵ. 23. 24.
վարները՝ իրենք ու իրենց մարդիկ-
ները երբոր լսեցին թէ Բաբելոնի
Թագաւորը՝ Աքիկամի որդին Գո-
դողիան երկրին վրայ դրաւ, և Բա-
բելոն չքշուած մարդիկները, ու
կնիկները, և տղաքները, ու երկ- Ժ Գլ. ԼԹ. 10.
րին աղքատները անոր յանձնեց,
8 Մասփա եկան Գոդողիային. այս-
ինքն՝ Նաթանիայի որդին Իսմա- Ի Գլ. ԽԱ. 1.
յէլը, ու Կարէի որդիքը՝ Յօհանանը
ու Յովնաթանը, և Թանհումէթի
որդին Սարայիան, ու Նետոփա-
թացի Եփային որդիքը, ու Մա-
քաթիի որդին Յեզոնիան, թէ ի-
րենք և թէ իրենց մարդիկները։
9 Եւ Սափանի որդւոյն՝ Աքիկամին
որդին Գոդողիան՝ անոնց ու անոնց
մարդիկներուն երդում ըրաւ ու
ըսաւ. Քաղդէացւոց ծառայու-
թիւն ընելէն մի վախնաք. աս երկ-
րիս մէջ բնակեցէք, և Բաբելոնի
Թագաւորին ծառայութիւն ըրէք,
10 ու ձեզի աղէկ պիտի ըլլայ։ Եւ ես
ահա Մասփայի մէջ կը բնակիմ,
որ մեզի եկող Քաղդէացիներուն
առջևը կենամ. ու դուք գինի, և
ամառնային պտուղ ու եղ ժողվե-
ցէք, ու ձեր ամաններուն մէջը
դրէք, և ձեռքերնուդ տակը եղած
11 քաղաքներուն մէջ բնակեցէք։ Ու
Մովաբի մէջ, և Ամմոնի որդւոցը
մէջ, ու Եդովմի մէջ, և ամէն եր-
կիրներու մէջ եղող Հրեաներն ալ
երբոր լսեցին որ Բաբելոնի Թագա-
ւորը Հրէաստանի մէջ մնացորդ
թողուցեր է, ու անոնց վրայ՝ Սա-
փանի որդւոյն Աքիկամին որդին
12 Գոդողիան դրեր է, Բոլոր Հրեա-
ները ամէն իրենց ցրուած տեղերէն
դարձան, ու Յուդայի երկիրը՝ Գո-
դողիային Մասփա եկան, և խիստ

Ն. Ք. ԶՃ. 588

շատ գինի ու ամառնային պտուղ-
ներ ժողվեցին ։
13 Եւ Կարէի որդին Յօհանանը , ու
դաշտը եղող բոլոր զօրավարները՝
14 Մասփա եկան Գոդողիային , Ու
անոր ըսին . Գիտե՞ս որ ՆԱմմոնի (Ն Տե՛ս Գլ. ԽԱ. 10։)
որդւոցը թագաւորը Բաալիս՝ Նա-
թանիայի որդին Իսմայէլը ղրկեց
քեզ մեռցնելու համար . բայց Ա-
քիկամի որդին Գոդողիան անոնց
15 չհաւատաց ։ Եւ Կարէի որդին Յօ-
հանանը Մասփայի մէջ Գոդողիային
հետ գաղտուկ խօսեցաւ , ու ըսաւ .
Հիմա երթամ , ու Նաթանիայի
որդին Իսմայէլը զարնեմ , ու մարդ
չիմանայ . ինչո՞ւ անիկայ քեզ մեռ-
ցընէ , ու քովդ ժողվուած բոլոր
Հրէաները ցրուին , և Յուդայի
16 մնացորդը կորսուի ։ Ու Աքիկամի
որդին Գոդողիան՝ Կարէի որդւոյն
Յօհանանին ըսաւ . Այդ բանը մի՛
ըներ . վասն զի դուն Իսմայէլին
վրայով սուտ կը խօսիս ։

ԳԼ. ԽԱ

1 Իսմայէլ՝ նենգութեամբ Գոդողիան և ուրիշ-
ները սպաննելով , կը խորհի մնացորդին հետ
Ամմոնացւոց երկիրը երթալ ։ 11 Յօհանան
դերիները կ'ազատէ , ու միտքը կը դնէ որ Ե-
գիպտոս փախչի ։

1 Ու եղաւ որ՝ եօթներորդ ամսուն
մէջ թագաւորական սերունդէն
եղող՝ Եղիսամայի որդւոյն Ա Նա- (Ա Դ Թագ. ԻԵ. 25։ Գլ. Խ. 8։)
թանիային որդին Իսմայէլը՝ թա-
գաւորին նախարարներովը ու իր
հետը տասը մարդով՝ Մասփա եկաւ
Աքիկամի որդւոյն Գոդողիային . ու
հոն միասին հաց կերան Մասփայի
2 մէջ ։ Եւ Նաթանիայի որդին Իս-
մայէլը ու իր հետը եղող տասը
մարդը ելան և Սափանի որդւոյն
Աքիկամին որդին Բ Գոդողիան սը- (Բ Դ Թագ. ԻԵ. 25։)
րով զարկին , ու մեռցուցին զանի-
կայ՝ որն որ Բաբելոնի թագաւորը
3 երկրին վրայ դրեր էր ։ Նաև Գո-
դողիային հետ Մասփայի մէջ եղող
բոլոր Հրէաները , և հոն գըտ-
նուած Քաղդէացի պատերազմա-
կանները՝ Իսմայէլը կոտրեց ։
4 Ու եղաւ որ Գոդողիան մեռցը-
նելէն ետքը՝ հետևեալ օրը դեռ
5 մարդ չիմացած , Սիւքեմէն , Սե-
լովէն ու Սամարիայէն՝ Գ մօրուքնին (Գ Ղև. ԺԹ. 27, 28։ Բ Օր. ԺԴ. 1։ Ես. ԺԵ. 2։)
ածիլած , և հանդերձնին պատ-
ռած , ու իրենց մարմիննին վրայ կըտ-
րածներ ըրած ութսուն մարդ ե-
կան և անոնց ձեռքը ընծաներ ու
կնդրուկ կար՝ Դ Տէրոջը տունը տա- (Դ Ա Թագ. Ա. 7։ Տե՛ս Դ Թագ. ԻԵ. 9։)
6 նելու համար ։ Եւ Նաթանիայի
որդին Իսմայէլը՝ Մասփայէն ելաւ
զանոնք դիմաւորելու . անիկայ
դացած ատեն՝ լալով կ'երթար . ու
երբոր անոնց հասաւ , անոնց ըսաւ .
Աքիկամի որդւոյն Գոդողիային ե-
7 կէք ։ Ու եղաւ որ՝ երբոր անոնք
քաղաքին մէջտեղը եկան , Նաթա-
նիայի որդին Իսմայէլը՝ ինքը՝ իր
հետը եղող մարդիկներովը զանոնք
մեռցուց , ու փոսին մէջը նետեց ։
8 Եւ անոնց մէջ տասը մարդ գըտ-
նուեցաւ՝ որ Իսմայէլին ըսին .
Մեզ մի՛ մեռցըներ . վասն զի մենք
դաշտը ցորենի , գարիի , եղի ու
մեղրի ծածուկ շտեմարաններ ու-
նինք . ուստի անիկայ զանոնք չը-
և զանոնք իրենց եղբարցը մէջ չը-
մեռցուց ։
9 Ու ան փոսը՝ որուն մէջը Իսմա-
յէլ Գոդողիային * պատճառաւը (* Կամ՝ Հետը)
բոլոր մեռցուցած մարդիկներուն
դիերը նետեց , նոյնն էր Ե որ Ասա (Ե Գ Թագ. ԺԵ. 22։ Բ Մն. ԺԶ. 6։)
թագաւորը շիներ էր՝ Իսրայէլի
Բաասա թագաւորին երեսէն վախ-
նալուն համար . Նաթանիայի որդին
Իսմայէլը զանիկայ մեռելներով
լեցուց ։
10 Եւ Իսմայէլ Մասփայի մէջ եղող
ժողովուրդին բոլոր մնացորդը գերի
ըրաւ , Զ թագաւորին աղջիկները , (Զ Գլ. ԽԳ. 6։)
ու Մասփայի մէջ մնացած բոլոր
ժողովուրդը , որոնց վրայ Է Նաբու- (Է Գլ. Խ. 7։)
զարդան դահճապետը՝ Աքիկամի
որդին Գոդողիան վերակացու դրեր
էր . և Նաթանիայի որդին Իս-
մայէլը զանոնք գերի առնելով՝ գը-
նաց Ը Ամմոնի որդւոցը անցնելու ։ (Ը Գլ. Խ. 14։)
11 Եւ Կարէի որդին Յօհանանը ,
ու անոր հետ եղող Թ բոլոր զօրա- (Թ Գլ. Խ. 7, 8, 13։)
վարները՝ երբոր Նաթանիայի որ-
դւոյն Իսմայէլին ըրած բոլոր չա-
12 րութիւնը լսեցին , Իրենց բոլոր
մարդիկները առին , ու Նաթա-
նիայի որդւոյն Իսմայէլին հետ պա-
տերազմելու գացին , և զանիկայ
Ժ Գաբաւոնի շատ ջուրերուն քովը (Ժ Բ Թագ. Բ. 13։)
13 գտան ։ Ու Իսմայէլին հետը եղող
բոլոր ժողովուրդը՝ երբոր Կարէի
որդին Յօհանանը , ու անոր հետը
եղող բոլոր զօրավարները տեսան ,
14 ուրախացան ։ Եւ Իսմայէլին Մաս-
փայէն գերի քշած բոլոր ժողովուր-
դը երեսնին դարձուցին , ու ետ
դառնալով՝ Կարէի որդւոյն Յօհա-
15 նանին գացին ։ Բայց Նաթա-
նիայի որդին Իսմայէլը ութը մար-
դով Յօհանանին երեսէն խախաւ ,
ու Ամմոնի որդւոցը գնաց ։
16 Եւ Կարէի որդին Յօհանանը ,
ու անոր հետ եղող բոլոր զօրա-
վարները՝ Նաթանիայի որդին Իս-
մայէլէն ետ բերած ժողովուրդին
բոլոր մնացորդը Մասփայէն առին՝
Աքիկամի որդւոյն Գոդողիային
մեռցուելէն ետքը , այսինքն Գա-
բաւոնէն ետ բերած պատերազմող
կտրիճները , ու կնիկները , և տը-

17 ղաքները, ու ներքինիները, Ու
գացին Բեթլէհեմին քովը եղող
ᵉ Քամաամի պանդոկին մէջ նըս-
տան, որ երթան Եգիպտոս մտնեն՝
18 Քաղդէացւոց երեսէն. վասն զի ա-
նոնցմէ վախցան. քանզի Նաթա-
նիայի որդին Իսմայէլը՝ ᶠ Բաբելոնի
թագաւորին՝ երկրին վրայ դրած
Աքիկամի որդին Գոդողիան մեռ-
ցուցեր էր ։

Ն. Ք. ԳՔ. 588
ᵉ Բ Թագ. ԺԹ. 37, 38։
ᶠ Գլ. Խ. 5։

## ԳԼ. ԽԲ

1 Յօհանան կը խնդրէ Երեմիայէն, որ Տէրոջը հարցընէ ։ ու կը խոստանայ թէ պիտի հնա-զանդի անոր կամացը ։ 7 Երեմիա կ'իմացընէ անոր՝ որ եթէ Հրէաստանի մէջ մնան, ապա-հով պիտի ըլլան, 13 իսկ թէ որ Եգիպտոս եր-թան, պիտի կորսուին. 19 կը յանդիմանէ ա-նոնց կեղծաւորութիւնը, որ Տէրոջը բան կը հարցընեն ու միտք չունին կատարելու ։

1 Ու բոլոր զօրավարները, ᵃ ու Կա-
րէի որդին Յօհանանը, և Ով-
սէիայի որդին Յեզոնիան, ու բոլոր
ժողովուրդը պզտիկէն մինչև մեծը
2 մօտեցան, Ու Երեմիա մարգարէին
ըսին. Մեր խնդիրքը քու առջեւդ
ընդունելի ըլլայ. ու ᵇ մեզի համար՝
ᵇ այսինքն աս բոլոր մնացորդներուն
համար՝ քու Տէր Աստուծոյդ ա-
ղօթք ըրէ. վասն զի ᶜ շատէն քիչ
մնացինք, ինչպէս որ աչքերդ մեզ
3 կը տեսնեն. Ու քու Տէր Աստուածդ
ᵈ մեր երթալու ճամբան ու մեր ընե-
4 լու բանը մեզի իմացընէ ։ Ու Ե-
րեմիա մարգարէն անոնց ըսաւ.
Լսեցի. ահա ձեր Տէր Աստուծոյն
աղօթք կ'ընեմ ձեր խօսքերուն հա-
մեմատ, և ᵉ Տէրը ձեզի համար ինչ
պատասխան որ տալու ըլլայ, ձեզի
կ'իմացընեմ. ᶠ ձեզմէ բան մը չեմ
5 պահեր ։ Ու անոնք Երեմիային ը-
սին. ᵍ Տէրը մեր մէջը ճշմարիտ ու
հաւատարիմ վկայ ըլլայ՝ թէ որ
չընենք ան ամէն բաներուն համե-
մատ՝ որոնց համար քու Տէր Աս-
տուածդ քեզ մեզի պիտի խրկէ ։
6 Թէ՛ բարի և թէ չար՝ մեր Տէր Աս-
տուծոյն ձայնին պիտի հնազան-
դինք, որուն որ քեզ կը խրկենք.
որպէս զի մեր Տէր Աստուծոյն ձայ-
նին հնազանդելով՝ ʰ մեզի աղէկ ըլ-
լայ ։
7 Ու տասը օրէն ետքը՝ Տէրոջը
8 խօսքը եղաւ Երեմիային. Ու Կա-
րէի որդին Յօհանանը, և անոր հետ
եղող բոլոր զօրավարները, ու պզ-
տիկէն մինչև մեծը՝ բոլոր ժողովուր-
9 դը կանչեց, Ու անոնց ըսաւ. Իս-
րայէլին Տէր Աստուածը՝ որուն որ
դուք զիս խրկեցիք ձեր աղաչանքը
մատուցանելու համար, այսպէս
10 կ'ըսէ. Թէ որ շարունակէք աս
երկրիս մէջ բնակելու, ⁱ ես ալ ձեզ
պիտի շինեմ ու պիտի չփլցընեմ, և

ᵃ Գլ. Խ. 8. 13. Խա. 11։
ᵇ Ա Թագ. Է. 8։ Ժր. 19։ Ես. Լէ. 4։ Յակ. Ե. 16։
ᶜ Ղև. Իզ. 22։
ᵈ Եզր. Ը. 21։
ᵉ Ա Թագ. Իբ. 14։
ᶠ Ա Թագ. Գ. 18։ Գործ. Ի. 20։
ᵍ Ծն. Լա. 50։
ʰ Բ Օր. Զ. 3։ Գլ. Է. 23։
ⁱ Գլ. Իդ. 6։ Լա. 28։ Լդ. 7։

ձեզ պիտի տնկեմ, ու պիտի չխըլ-
լեմ. վասն զի ᵏ ձեզի ըրած չարի-
11 քիս վրայով զղջացի ։ Մի՛ վախ-
նաք Բաբելոնի թագաւորին երեսէն՝
ուսկից որ կը վախնաք. անկէ մի՛
վախնաք՝ կ'ըսէ Տէրը. ˡ վասն զի
ձեզ անոր ձեռքէն ազատելու հա-
մար, ու ձեզ ապրեցընելու հա-
12 մար՝ ես ձեզի հետ եմ. Ու ᵐ ձե-
զի ողորմութիւններ գտնել պիտի
տամ. և անիկայ ձեզի պիտի ողոր-
մի, ու ձեզ ձեր երկիրը դարձընէ ։
13 Բայց թէ որ ⁿ ըսէք. Աս երկրիս
մէջ չենք բնակիր. ու ձեր Տէր
Աստուծոյն խօսքը մտիկ չընելով՝
14 Ըսէք, Ոչ՛. հապա Եգիպտոսի
երկիրը մտնենք, որ հոն պատե-
րազմ պիտի չտեսնենք, ու փողի
ձայն պիտի չլսենք, և հացի համար
անօթի պիտի չմնանք, ու հոն պի-
15 տի բնակինք. Ուրեմն հիմա Տէրո-
ջը խօսքը մտիկ ըրէք՝ ով Յուդայի
մնացորդը ։ Զօրաց Տէրը՝ Իսրայէ-
լին Աստուածը այսպէս կ'ըսէ. ᵒ Թէ
որ դուք ᵖ ձեր երեսները չփոկէք
Եգիպտոս մտնելու, ու հոն պան-
16 դըխտանալու երթաք, Ան ատենը
ան սուրը՝ ᵠ ուսկից որ կը վախնաք,
հոն Եգիպտացւոց երկրին մէջ ձեր
վրայ պիտի գայ, և ան սովը՝ ուս-
կից որ դուք կը զարհուրիք, հոն
Եգիպտացւոց երկրին մէջ ձեր ե-
տևէն պիտի պաշարէ, ու հոն պի-
17 տի մեռնիք ։ Ու ան ամէն մարդի-
կը՝ որոնք իրենց երեսները կը չփո-
կեն Եգիպտոս երթալու՝ հոն պան-
դըխտանալու համար, ʳ սրով, սո-
վով ու ժանտախտով պիտի մեռ-
նին. ու ˢ իմ անոնց վրայ բերելու
չարիքիս երեսէն անոնցմէ մնացորդ
ու ազատուած պիտի չմնայ ։
18 Վասն զի զօրաց Տէրը՝ Իսրայէ-
լին Աստուածը այսպէս կ'ըսէ. Ինչ-
պէս որ իմ բարկութիւնս ու սրտմը-
տութիւնս ᵗ Երուսաղէմի բնակչացը
վրայ թափեցաւ, այնպէս ձեր վրայ
պիտի թափի իմ սրտմտութիւնս,
երբոր Եգիպտոս մտնէք. և ᵘ անէծ-
քի, զարմանքի, նզովքի ու նա-
խատինքի ենթակայ պիտի ըլլաք, ու
մէյմըն ալ աս տեղս պիտի չտես-
19 նէք ։ Ո՛վ Յուդայի մնացորդնե-
րը՝ Տէրը ձեզի համար՝ ᵛ Եգիպտոս
մի՛ մտնէք՝ ըսաւ. աղէկ
գիտցէք՝ որ այսօր ձեզի վկայութիւն
20 կ'ընեմ ։ Վասն զի դուք ձեր հո-
գւոյն դէմ նենգութիւն ըրիք,
երբոր զիս ձեր Տէր Աստուծոյն խըր-
կեցիք՝ ըսելով. ʷ Մեզի համար մեր
Տէր Աստուծոյն աղօթք ըրէ, ու
մեր Տէր Աստուծոյն ամէն ըսած
խօսքը մեզի պատմէ՝, ու պիտի ը-
21 նենք ։ Ու ես այսօր ձեզի պատ-

Ն. Ք. ԳՔ. Իրր 588
ᵏ Բ Օր. ԼԲ. 36։ Գլ. ԺԸ. 8։
ˡ Ես. Խգ. 5։ Հռով. Ը. 31։
ᵐ Սաղ. ՃԴ. 45, 46։
ⁿ Գլ. Խդ. 16։
ᵒ Բ Օր. ԺԷ. 16։ Գլ. Խգ. 12, 13, 14։
ᵖ Ղուկ. Թ. 51։
ᵠ Եզեկ. ԺԱ. 8։
ʳ Գլ. Իդ. 10։ Հմր 22։
ˢ Տես Գլ. Խդ. 14, 28։
ᵗ Գլ. Է. 20։
ᵘ Գլ. ԺԸ. 16։ Իդ. 9։ Իզ. 6։ ԻԹ. 18, 22։ Խդ. 12։ Զաք. Ը. 13։
ᵛ Բ Օր. ԺԷ. 16։
ʷ Հմր 2։

Ն. Ք. ԴՃ. ԻՐՐ 588

Ղ Հճր 17. Ե-զեկ. Գ. 11.

մեզի, ու դուք մտիկ չըրիք ձեր
Տէր Աստուծոյն ձայնը, ու ան ա-
մէն խօսքերը՝ որոնց համար զիս ձեզի
22 խրկեց։ Եւ հիմա աղէկ գիտցէք՝
որ դուք սրով, սովով ու ժանտ-
ախտով պիտի մեռնիք ան տեղը՝
ուր որ կ'ուզէք երթալ հոն պան-
դըխտանալու համար։

## ԳԼ. ԽԳ

1 Յոհանան նախատելով Երեմիային մարգարէութիւնը, Եգիպտոս կը տանի զանիկայ և ուրիշները. 8 Երեմիա մէկ օրինակով մը կը նախաձայնէ Եգիպտոսի նուաճիլը՝ Բաբելացւոց ձեռքով։

1 Երբոր Երեմիա բոլոր ժողովուր-
դին անոնց Տէր Աստուծոյն բո-
լոր խօսքերը խօսիլը լմնցուց, ո-
րոնց համար անոնց Տէր Աստուածը
զանիկայ անոնց խրկեր էր, այսինքն
2 աս բոլոր խօսքերը, Ան ատենը
Ովսէիայի որդին Ազարիան, ու
Կարէի որդին Յօհանանը, և բոլոր
ամբարտաւան մարդիկները Երեմի-
ային խօսեցան, ու ըսին. Դուն
սուտ կը խօսիս. մեր Տէր Ա-
տուածը քեզ չխրկեց որ ըսես
թէ՝ Եգիպտոս մի՛ մտնէք հոն
3 պանդըխտանալու համար. Հապա
Ներիայի որդին Բարուքը քեզ
մեզի դէմ ոտք կը հանէ, որպէս
զի մեզ Քաղդէացւոց ձեռքը տայ,
որ մեզ մեռցընեն, ու մեզ Բա-
4 բիլոն գերի տանին։ Եւ Կարէի
որդին Յօհանանը, ու բոլոր զօրա-
վարները, և բոլոր ժողովուրդը՝
Տէրոջը ձայնը մտիկ չըրին, որ Յու-
5 դայի երկրին մէջ բնակին. Հապա
Կարէի որդին Յօհանանը ու բոլոր
զօրավարները՝ Յուդայի բոլոր մը-
նացորդները առին, որոնք Յու-
դայի երկրին մէջ բնակելու համար
ետ դարձեր էին ան բոլոր ազգերէն՝
6 ուր որ ցրուած էին. Այսինքն՝ էրիկ
մարդիկները, ու կնիկները, և տը-
ղաքները, ու թագաւորին աղջիկ-
ները, և նաբուզարդան դահճա-
պետին՝ Սափանի որդւոյն Աքիկա-
մի որդւոյն Գոդողիային քովը թո-
ղուցած բոլոր մարդիկները, ու Ե-
րեմիա մարգարէն, և Ներիայի որ-
7 դին Բարուք. Ու Եգիպտոսի եր-
կիրը գացին. վասն զի Տէրոջը
ձայնը մտիկ չըրին. ու մինչև
Տափնաս եկան։
8 Եւ Տափնասի մէջ Տէրոջը խօսքը
9 եղաւ Երեմիային՝ ըսելով. Ձեռքդ
մեծ քարե՛ր առ, ու զանոնք Յու-
դայի մարդոցը աչքերուն առջևը՝
Տափնաս եղող՝ Փարաւոնի տանը
դրանը առջևի աղիւսատունը կա-
10 ւին մէջը թաղէ, Եւ անոնց ըսէ.
Զօրաց Տէրը՝ Իսրայէլին Աստուա-
ծը այսպէս կ'ըսէ. Ահա ես պիտի
խրկեմ, ու իմ ծառաս Բաբիլօ-
նի նաբուգոդոնոսոր թագաւորը
պիտի առնեմ, և անոր աթոռը աս
իմ թաղած քարերուս վրայ պիտի
դնեմ. ու անիկայ իր արքայական
խորանը անոնց վրայ պիտի տարա-
11 ծէ. Եւ պիտի գայ՝ Եգիպտոսի
երկիրը պիտի զարնէ. Մահուան
համար եղողները՝ մահուան, գե-
րութեան համար եղողները՝ գե-
րութեան, և սուրի համար եղող-
12 ները՝ սուրի պիտի մտնէ։ Ու Ե-
գիպտոսի աստուածներուն տու-
ներուն մէջը կրակ պիտի բռընկցը-
նեմ. և անիկայ զանոնք պիտի այ-
րէ, ու զանոնք գերի պիտի տանի.
և անիկայ Եգիպտոսի երկիրը պիտի
հագնի, ինչպէս որ հովիւը իր հան-
դերձը կը հագնի. ու անկէ խաղա-
13 ղութեամբ պիտի ելլէ։ Ու Եգիպ-
տոսի երկրին մէջ եղող արևու
տանը արձանները պիտի կոտրտէ,
ու Եգիպտոսի աստուածներուն
տուները կրակով պիտի այրէ։

Ղ Գլ. ԽԵ. 9. ԽԷ. 6. Տես Եզեկ. ԻԹ. 18. 20.
Է Գլ. ԽԴ. 13. ԽԳ. 13.
Ը Գլ. ԺԵ. 2. Զաք. ԺԱ. 9.
Թ Գլ. ԽԳ. 25.

## ԳԼ. ԽԴ

1 Երեմիա կը նկարագրէ Յուդային աւերումը իրենց կռապաշտութեանը համար. 11 Եգիպտոսի մէջ կռապաշտութեան մեղքը գործողներուն կործանումը կը նախաձայնէ։ 15 Հըրէից կամակորութիւնը. 20 որուն համար Երեմիա սպառնալիք կ'ընէ անոնց. 29 և ան սպառնալիքին կատարուելուն նշան՝ Եգիպտոսի կործանումը կը դնէ։

1 Եգիպտոսի երկրին մէջ բնակող
բոլոր Հրէաններուն համար, այսին-
քն Մագդողը, Տափնասը,
Մեմփիսը, ու Պաթուրեսի երկ-
րին մէջ բնակողներուն համար՝ Ե-
րեմիային եղած խօսքն է, որ ըսաւ.
2 Զօրաց Տէրը՝ Իսրայէլին Ա-
տուածը այսպէս կ'ըսէ. Դուք տե-
սաք ան ամէն չարիքը որ Երուսա-
ղէմին վրայ, ու բոլոր Յուդայի
քաղաքներուն վրայ բերի. և ահա
անոնք այսօր աւերակ են, ու անոնց
3 մէջը բնակող չկայ, Իմ բարկացընե-
լու համար ըրած չարութիւններ-
նուն պատճառաւը, որ գացին
խունկ ծխեցին, ու ծառայութիւն
ըրին ուրիշ աստուածներու, որոնք
ո՛չ իրենք ճանչցեր էին, ո՛չ դուք,
4 ո՛չ ալ ձեր հայրերը։ Եւ ես ձեզի
խրկեցի իմ բոլոր ծառաներս մար-
գարէները՝ կանուխ ելլելով ու խըր-
կելով, և ըսի. Աս պիղծ գործը
մի՛ ընէք, որն որ ես կ'ատեմ։
5 Բայց մտիկ չըրին, ու ականջնին
չծռեցին՝ որ իրենց չարութիւննե-
րէն դառնան, և ուրիշ աստուած-
6 ներու խունկ չծխեն։ Ուստի իմ
սրտմտութիւնս ու բարկութիւնս
թափեցաւ, և Յուդայի քաղաք-
ներուն մէջ, ու Երուսաղէմի փո-

Ա Գլ. ԽԲ. 1.
Բ Գլ. Խ. 11, 12.
Գ Գլ. ԽԱ. 10.
Դ Գլ. ԼԹ. 10. Խ. 7.
Ե Գլ. Բ. 16. ԽԴ. 1. Ի-ն Եսա. Լ. 4 Հ'ըստ Հա-նէս.
588 կը վեր-ջանայ

587

Ա Եզ. ԺԴ. 2. Գլ. ԽԶ. 14.
Բ Գլ. ԽԴ. 7.
Գ Եզ. ԺԹ. 13.
Դ Գլ. Թ. 11. ԼԴ. 22.
Ե Գլ. ԺԹ. 4.
Զ Բ Օր. ԺԲ. 6. ԼԲ. 17.
Է Բ Մն. ԼԶ. 15. Գլ. Է. 25. ԻԵ. 4. ԻԶ. 5. ԻԹ. 19.
Ը Գլ. ԽԲ. 18.

Ն. Ք. ԶՔ. 587

ղոցներուն մէջ բորբոքեցաւ. ու
անոնք՝ աս օրուան եղածին պէս՝ ան-
7 ապատ ու ամայի եղան։ Եւ հիմա
զօրաց Տէր Աստուածը՝ Իսրայէլին
Աստուածը այսպէս կ'ըսէ. ինչո՞ւ
համար դուք ձեր հոգւոյն դէմ աս
մեծ չարութիւնը կը գործէք, որ
Յուդայի մէջէն՝ էրիկ մարդը ու
կնիկը, տղան ու կաթնկեր մանուկը
կորսնցընէք, այնպէս որ ձեզի մնա-
8 ցորդ մը չմնայ. Ձեր ձեռացը
գործքերովը զիս սրդողցընելով, և
ուրիշ աստուածներու խունկ ծխե-
լով Եգիպտոսի երկրին մէջ, ուր որ
դուք մտաք հոն պանդխտանալու
համար, որպէս զի ձեր անձը կոր-
սնցընէք, ու երկրիս բոլոր ազգե-
րուն մէջը հանէծք ու նախատինք
9 ըլլաք։ Միթէ Յուդայի երկրին
մէջ, ու Երուսաղէմի փողոցներուն
մէջ՝ ձեր հայրերուն ըրած չարու-
թիւնները, և Յուդայի թագաւոր-
ներուն չարութիւնները, ու անոնց
կնիկներուն չարութիւնները, և
ձեր չարութիւնները, ու ձեր կը-
նիկներուն չարութիւնները մոռ-
10 ցա՞ք։ Անոնք մինչև աս օրս իրենց
անձերը չխոնարհեցուցին, ու չը-
վախցան, և ձեր առջևը, ու ձեր
հայրերուն առջևը դրած օրէնքիս
ու պատուիրանքներուս մէջ չքալե-
11 ցին։ Անոր համար զօրաց Տէրը՝
Իսրայէլին Աստուածը այսպէս կ'ը-
սէ. Ահա ես ձեր վրայ կը հաստա-
տեմ իմ երեսս չարիքի համար, ու
բոլոր Յուդան կորսնցընելու հա-
12 մար. Եւ պիտի առնեմ Յուդայի
մնացորդը՝ որոնք երեսնին հաստա-
տեցին Եգիպտոսի երկիրը մտնելու՝
հոն պանդխտանալու համար. ու
ամէնքը Եգիպտոսի երկրին մէջ
պիտի հատնին. սրով, սովով
պիտի իյնան ու հատնին. պզտ-
տիկէն մինչև մեծը սրով ու սո-
վով պիտի մեռնին, և անէծքի,
զարմանքի, նզովքի ու նախատինքի
13 առարկայ պիտի ըլլան։ Ու Եգիպ-
տոսի երկիրը բնակողներուն այցե-
լութիւն պիտի ընեմ, ինչպէս որ
Երուսաղէմին՝ սրով, սովով ու
ժանտախտով այցելութիւն ըրի։
14 Եւ Յուդայի մնացորդէն՝ որոնք
Եգիպտոսի երկիրը պանդխտանա-
լու գացողներէն մնացորդ ու ազա-
տուած պիտի չմնայ, որ Յուդայի
երկիրը դառնան, ուր որ անոնք կը
յուսան դառնալու, ու հոն բնակե-
լու. վասն զի Եգիպտոսէն փախ-
չողները միայն պիտի դառնան։
15 Եւ ան բոլոր մարդիկները՝ որ
գիտէին թէ իրենց կնիկները օտար
աստուածներու խունկ կը ծխէին,
և բոլոր նել կայ.. եղող կնիկները՝

ա Թուոց. ԺԶ. 38. Գլ. Է. 19.
բ Գլ. ԻԵ. 6, 7.
գ Գլ. ԽԲ. 18. Հմր 12.
դ Առակ. ԻԲ. 14.
ե Ղև. ԺԷ. 10. Ի. 5, 6. Գլ. ԻԱ. 10. Ամով. Թ. 4.
զ Գլ. ԽԲ. 15, 16, 17, 22.
է Գլ. ԽԲ. 18.
ը Գլ. ԽԳ. 11.
թ Հմր 28.

մեծ ժողով մը, ու Եգիպտոսի
երկիրը՝ Պաթուրեսի մէջ բնակող
բոլոր ժողովուրդը՝ Երեմիային պա-
16 տասխան տուին, ըսելով. Տէրոջը
անունովը մեզի խօսած խօսքիդ վը-
րայով՝ մենք քեզի մտիկ չենք ըներ.
17 Հապա անշուշտ մեր բերնէն ելած
ամէն խօսքը պիտի ընենք, երկնից
թագուհիին խունկ ծխելով, և ա-
նոր թափելու նուէրներ մատուցա-
նելով. ինչպէս որ ըրինք՝ մենք ու
մեր հայրերը, մեր թագաւորները
ու մեր իշխանները՝ Յուդայի քա-
ղաքներուն մէջ, ու Երուսաղէմի
փողոցներուն մէջ, ուր որ հացով
կշտացանք, և հանգիստ էինք, ու
18 չարիք մը չտեսանք։ Սակայն ան
ատենէն 'ի վեր՝ որ երկնից թագու-
հիին խունկ ծխելէն, ու անոր թա-
փելու նուէրներ մատուցանելէն ետ
կեցանք, ամէն բանի կարօտ ե-
ղանք, և սրով ու սովով հատանք։
19 Ու երբոր երկնից թագուհիին
խունկ կը ծխէինք, և անոր թա-
փելու նուէրնէր կը մատուցանէ-
ինք. միթէ առանց մեր էրիկներուն
հրամանի՞ն՝ զանիկայ պաշտելու հա-
մար բլիթներ շինեցինք, ու անոր
թափելու նուէրնէր մատուցինք։
20 Ու Երեմիա բոլոր ժողովուրդին,
էրիկներուն և կնիկներուն, ու ի-
րեն աս պատասխանը տուող բոլոր
ժողովուրդին խօսեցաւ ու ըսաւ.
21 Միթէ ան խունկը՝ որ Յուդայի
քաղաքներուն մէջ, ու Երուսաղէմի
փողոցներուն մէջ կը ծխէիք՝ դուք
ու ձեր հայրերը, ձեր թագաւոր-
ները ու ձեր իշխանները, ու երկ-
րին ժողովուրդը, Տէրը չյիշե՞ց,
22 ու անոր միտքը չինկա՞ւ։ Եւ Տէ-
րը ձեր չար գործքերուն, ու ձեր
ըրած գարշութիւններուն՝ ալ չկըր-
ցաւ համբերել. ուստի ձեր երկի-
րը անապատ, ամայի, ու նզո-
ված, և անբնակ եղաւ, ինչպէս
23 որ այսօր կ'երեւնայ։ Որովհետև
դուք խունկ ծխեցիք, ու Տէրոջը
դէմ մեղք գործեցիք, և Տէրոջը
ձայնին հնազանդութիւն չըրիք, ու
անոր օրէնքին, պատուիրանքներուն
ու վկայութիւններուն մէջ չքալե-
ցիք, անոր համար աս չարիքը
ձեզի եկաւ, ինչպէս որ այսօր կ'ե-
րեւնայ։
24 Ու Երեմիա բոլոր ժողովուրդին
ու բոլոր կնիկներուն ըսաւ. Տէրոջը
խօսքը մտիկ ըրէք՝ ով Եգիպտոսի
երկրին մէջ եղող բոլոր Յուդա.
25 Զօրաց Տէրը՝ Իսրայէլին Աստուա-
ծը այսպէս կը խօսի ու կ'ըսէ.
Դուք ու ձեր կնիկները ձեր բեր-
նովը խօսեցաք, ու ձեր ձեռքովը
'ի գործ դրիք, ու ըսիք. Անշուշտ

Ն. Ք. ԶՔ. 587

ժ Գլ. Զ. 16.
ի Թուոց. Լ. 12. Բ Օր. ԻԳ. 23. Դատ. ԺԱ. 36. Տես Հմր 25.
լ Գլ. Է. 18.
խ Գլ. Է. 18.
ծ Գլ. ԻԵ. 11, 18. 38. Հմր 6.
կ Դան. Թ. 11, 12.
հ Գլ. ԽԳ. 7. Հմր 15.
ձ Հմր 15, 17.

Ն․ Ք․ ՆԶ․ 587

ըրած ուխտերնիս պիտի կատարենք,
այսինքն երկնից թագուհիին խունկ
պիտի ծխենք, ու անոր թափելու
նուէրներ պիտի մատուցանենք․
այո՛ դուք ձեր ուխտերուն վրայ
հաստատ պիտի կենաք, և ձեր ուխ-
26 տերը պիտի կատարէք։ Անոր հա-
մար Տէրոջը խօսքը մտիկ ըրէք՝ ո՛վ
բոլոր Յուդա, որ Եգիպտոսի երկ-
րին մէջ կը բնակիք․ Ահա ես իմ
մեծ անունովս երդում ըրի՝ կ'ըսէ
Տէրը, որ Եգիպտոսի բոլոր երկրին
մէջ մէյմըն ալ բնաւ Յուդայի
մարդու մը բերնէն իմ անունս
պիտի չկանչուի՝ ըսելով․ Եհովայ
27 Տէրը կենդանի է ։ Ահա ես անոնց
վրայ կը հսկեմ չարիքի համար, և
չէ թէ բարիքի համար․ ու Եգիպ-
տոսի երկրին մէջ եղող Յուդայի
բոլոր մարդիկները նրով ու սովով
պիտի կոտրուին մինչև որ հատնին։
28 Եւ խիստ քիչ մարդիկ պիտի ըլլան
որ սուրէն ազատուելով՝ Եգիպտո-
սի երկրէն Յուդայի երկիրը պիտի
դառնան, ու Եգիպտոսի երկիրը
պանդխտանալու գացող Յուդայի
բոլոր մնացորդները պիտի գիտնան
թէ որուն խօսքը պիտի հաստա-
29 տուի, իմս՝ թէ իրենցը։ Եւ ա-
սիկայ ձեզի նշան ըլլայ՝ կ'ըսէ Տէրը,
որ աս տեղս ձեզի այցելութիւն պի-
տի ընեմ, որպէս զի գիտնաք որ
իմ խօսքս ձեր վրայ անշուշտ պի-
տի հաստատուի չարիքի համար։
30 Տէրը այսպէս կ'ըսէ․ Ահա ես Ե-
գիպտոսի Փարաւոն Վափրէ թա-
գաւորը իր թշնամիներուն ձեռքը
ու իր հոգին փնտռողներուն ձեռքը
պիտի մատնեմ․ ինչպէս որ Յու-
դայի Սեդեկիա թագաւորը՝ իր
թշնամիին, ու իր հոգին փնտռող
Բաբելոնի Նաբուգոդոնոսոր թա-
գաւորին ձեռքը մատնեցի։

Ն․ Ք․ ՆԶ․ 587 · Հ Ծն․ ԻԲ․ 16։ · Եզեկ․ Ի․ 39։ · Գլ․ Ա․ 10։ ԼԱ․ 28։ Եզեկ․ Է․ 6։ · Հմր 12։ · Հմր 14։ Ես․ ԻԷ․ 13։ · Հմր 17․25․ 26։ · 589 · Սաղ․ ԼԳ․ 11։ · Գլ․ ԽԴ․ 25․26։ Եզեկ ԻԹ․ 3․ Լ․ 21․ · Գլ․ ԼԹ․ 5։

ԳԼ․ ԽԵ

1 Բարուք խիստ տրտում ըլլալով, 4 Երեմիա խրատ ու մխիթարութիւն կու տայ անոր։

1 Երեմիա մարգարէին խօսքը, որ
Ներիայի որդւոյն Բարուքին
խօսեցաւ, երբոր անիկայ աս խօս-
քերը Երեմիային բերնէն գիրքի մէջ
գրեց՝ Յուդայի թագաւորին Յով-
սիայի որդւոյն Յովակիմին չորրորդ
տարին․ ու ըսաւ․
2 Ո՛վ Բարուք՝ Իսրայէլի Տէր Աս-
տուածը քեզի համար այսպէս կ'ը-
3 սէ․ Դուն ըսիր․ Հիմա վա՜յ ինծի,
վասն զի Տէրը իմ ցաւիս վրայ
տրտմութիւն աւելցուց․ իմ հե-
ծութենէս յոգնեցայ, ու հանգըս-
4 տութիւն չեմ գտներ։ Անոր ասանկ
ըսես․ Տէրը այսպէս կ'ըսէ․ Ահա
ես իմ շինածս պիտի փլցընեմ,

Իրր 607 · Գլ․ ԼԶ․ 1․4․32։ · Ես․ Ե․ 5։

ու իմ տնկածս պիտի խլեմ՝ այս-
5 ինքն աս բոլոր երկիրը։ Եւ դուն
քեզի մեծ բանե՞ր կը փնտռես․ մի՛
փնտռեր․ քանզի ահա ես ամէն
մարմնոյ վրայ չարիք պիտի բերեմ՝
կ'ըսէ Տէրը․ բայց քու կեանքդ
քեզի աւարի մը պէս պիտի տամ
քու ամէն երթալու տեղուանքդ։

Ն․ Ք․ ՆԶ․ Իրր 607 · Գլ․ ԻԱ․ 26։ · Գլ․ ԻԱ․ 9․ ԼԸ․ 2։ ԼԹ․ 18։

ԳԼ․ ԽԶ

1 Երեմիա կը մարգարէանայ թէ Փարաւոնի զօրքը Եփրատին քովը պիտի կորսուի, 13 և թէ Նաբուգոդոնոսոր Եգիպտոսին պիտի տիրէ․ 27 Իսրայէլացիները կը մխիթարէ՝ իրենց վրայ հասնելու պատուհասին վրայով։

1 Տէրոջը խօսքը՝ որ եղաւ Երեմիա
մարգարէին ազգերուն վրա-
յով․
2 Եգիպտոսի համար․ Եգիպտա-
ցւոց թագաւորին՝ Փարաւոն Նե-
քաւովին զօրքին մէջ Եփրատ
գետին քովը եղող զօրքին վրայ՝
որն որ Բաբելոնի Նաբուգոդոնոսոր
թագաւորը զարկաւ, Յուդայի
թագաւորին Յովսիայի որդւոյն
Յովակիմին չորրորդ տարին։
3 Ասպար ու վահան պատրաստե-
ցէք ու պատերազմի՛ մօտեցէք։
4 Ձիերը լծեցէք, ու դուք ո՛վ ձիա-
ւորներ՝ հեծէ՛ք․ սաղաւարտներով
կայնեցէք․ նիզակները փայլեցու-
5 ցէ՛ք, զրահները հագէ՛ք։ Զանոնք
ինչո՞ւ համար զարհուրած ու ետ
դարձած կը տեսնեմ․ անոնց զօ-
րաւորները անգամ զարնուեցան,
ու արտօրնօք փախչելով ետեւնին
չնայեցան․ ամէն կողմէն վախ
6 կայ՝ կ'ըսէ Տէրը։ Շուտ վազողը
թող չփախչի, ու զօրաւորը չա-
զատի․ անո՛նք հիւսիսային կողմը՝
Եփրատ գետին քովը գլորելով
7 պիտի իյնան։ Ո՞վ է ասիկայ՝ որ
Նեղոս գետի պէս վեր կ'ելլէ, որուն ջու-
8 րերը գետերուն պէս կը ծփին։ Ե-
գիպտոսը գետի պէս վեր կ'ելլէ,
և անոր ջուրերը գետերուն պէս կը
ծփին․ ու կ'ըսէ․ Վեր ելլեմ․ եր-
կիրը ծածկեմ, քաղաքը ու անոր
9 բնակիչները բնաջինջ ընեմ։ Ո՛վ
ձիեր՝ ելէ՛ք, ու ո՛վ կառքեր՝ կատ-
ղեցէ՛ք․ և զօրաւորները թող ել-
լեն, վահան բռնող Եթովպացիք
ու Փուդացիք, ու աղեղ բռնող
10 լարող Լուդացիք․ Վասն զի
այսօր զօրաց Տէր Եհովային վը-
րէժխնդրութեան օրն է, որ իր
թշնամիներէն վրէժ առնէ․ Եւ
սուրը պիտի ուտէ ու կշտանայ, և
անոնց արիւնովը պիտի գինովնայ․
վասն զի հիւսիսի երկրին մէջ՝ Եփ-
րատ գետին քովը զօրաց Տէր Եհո-
11 վան զոհ ունի։ Գաղաադ ելիր,
ու բալասան առ՛ ո՛վ Եգիպտոսին

Գլ․ ԻԵ․ 15․ · Դ Թագ․ ԻԳ 29։ Բ Մն․ ԼԵ․ 20։ · Գլ․ ԾԱ․ 11․12։ Նաւ Բ․ 1։ Գ․ 14։ · Գլ․ Զ 25։ ԽԹ․ 29։ · Դան․ ԺԱ․ 19։ · Տես Ես․ Ը․ 7․8։ Գլ․ ԽԷ․ 2։ Դան․ ԺԱ․ 22։ · Ես․ ԿԶ․ 19։ · Ես․ ԺԶ 6։ Յովել․ Ա․ 15։ Բ․ 1։ · Բ Օր․ ԼԲ․ 42։ Ես․ ԼԴ․ 6։ · Ես․ ԼԴ․ 6։ Սոփ․ Ա․ 7։ Տես Եզեկ․ ԼԹ․ 17։ · Գլ․ Ը․ 22։ ԾԱ․ 8։ · Ես․ ԽԷ․ 1։

Ն. Ք. Գ. Ք. ԺԲԲ 607

ԻԵզեկ. Լ. 21։

Ծ Ես. ԺԹ. 1։ Գլ. ԽԴ. 10, 11։ Եզեկ. ԻԹ. Լ. ԼԲ։

Կ Հմր 3. 4։

Հ Հմր 10։

Յ Ղև. ԻԶ. [illegible]

Շ Եսա. ԽԷ. 4։ ԽԸ. 2։ Գլ. ԽԸ. 15։

Ճ Տես Գլ. ԽԸ. 18։

Մ Եսա. Ի. 4։

Յ Ովս. Ժ. 11։

Ն Գլ. Ա. 14։ ԽԷ. 2։ Հմր 6. 10։

Շ Սաղ. ԼԵ. 13։ Գլ. Ծ. 27։

Ո Տես Եսա. ԻԹ. 4։

Չ Եսա. Ժ. 34։

Պ Դատ. Զ. 5։

Ջ Գլ. Ա. 15։

Ռ Կամ Նովէն Եկող բազմութեանը։

Ս Տես Եզեկ. Լ. 14, 15, 16։ Նաւ. Գ. 8։

Վ Գլ. ԽԴ. 12, 13։ Եզեկ. Լ. 13։

կոյս աղջիկը. դեղերը պարապ տե-
ղը կը շատցընես. Քեզի բժշկու-
12 թիւն չկայ։ Ազգերը քու անար-
գանքդ լսեցին, ու քու աղաղակդ
երկիրը լեցուց. վասն զի զօրաւորը
զօրաւորին վրայ գլորեցաւ. եր-
կուքը մէկտեղ ինկան։
13 Ա՛յս է այն խօսքը՝ որ Տէրը Ե-
րեմիա մարգարէին խօսեցաւ Բա-
բելոնի Նաբուգոդոնոսոր թագա-
ւորին գալուն, ու Եգիպտոսի եր-
14 կիրը զարնելուն վրայով։ Եգիպ-
տոսի մէջ պատմեցէ՛ք, Մագդողի
մէջ հրատարակեցէ՛ք, և Մեմփիսի
ու Տափնեսի մէջ հրատարակեցէ՛ք,
ու ըսէ՛ք. Կայնէ՛, ու պատրաստ
եղիր. վասն զի քու բոլորտիքդ
15 սուրը պիտի ուտէ։ Քու զօրա-
ւորներդ ինչո՞ւ կործանեցան. ա-
նոնք չկրցան կենալ. վասն զի Տէ-
16 րը զանոնք վար ձգեց։ Գլորուած-
ները շատցուց. ու իրարու վրայ
ինկան. ու ըսին. Ելէ՛ք, ու բռ-
նաւոր սուրին երեսէն՝ մեր ժողո-
վուրդին, ու մեր ծնած երկիրը
17 դառնանք։ Հոն կը կանչէին. Ե-
գիպտոսի Փարաւոն թագաւորը՝
դղրդող աղաղակ է. անիկայ իր ո-
18 րոշուած ժամանակը անցուց։ Ես
կենդանի եմ, կ՚ըսէ այն Թագաւո-
րը՝ որուն անունը Զօրաց Տէր է,
ինչպէս որ Թաբօրը լեռներու մէջ
է, ու ինչպէս որ Կարմեղոսը մինչև
ծովը կը հասնի, այնպէս ալ անիկայ
19 պիտի գայ։ Ո՛վ Եգիպտոս բը-
նակող աղջիկ՝ գերութեան կա-
րասիներ պատրաստէ քեզի. վասն
զի Մեմփիսը ամայի պիտի ըլլայ,
ու աւերակ՝ առանց բնակիչի։
20 Եգիպտոսը խիստ գեղեցիկ երի-
նջ մըն է. բայց կոտորած կու
21 գայ. հիւսիսէն կու գայ։ Եւ ա-
նոր մէջը վարձքով բռնուած զօրք-
երը՝ գիրցած զուարակներու պէս են.
քանզի անոնք ալ դարձան, մէկ-
տեղ փախան, չկայնեցան. վասն զի
անոնց վրայ՝ անոնց կորստեան օրը,
ու անոնց այցելութեան ժամանա-
22 կը հասաւ։ Անոր ձայնը օձի յու-
նին պէս պիտի ըլլայ. վասն զի
զօրքով պիտի հասնին, և անոր
վրայ՝ փայտահարներու պէս տա-
23 պարներով պիտի գան. Անոր
անտառը պիտի կտրեն, կ՚ըսէ Տէ-
րը, թէպէտև անոր ծառերը անթիւ
են. քանզի անոնք մարախէն շատ
են, այնպէս որ չեն համրուիր։
24 Եգիպտոսի աղջիկը ամօթով պիտի
ըլլայ. Հիւսիսային ժողովուրդին
25 ձեռքը պիտի մատնուի։ Զօրաց
Տէրը՝ Իսրայէլին Աստուածը կ՚ըսէ.
Ահա ես Նովացի Ամմոնին, և
Փարաւոնին, ու Եգիպտոսին, և

Ն. Ք. Գ. Ք. ԺԲԲ 607

Հ Գլ. ԽԴ. 30։ Եզեկ. ԼԲ. 11։

Ո Եզեկ. ԻԹ. 11, 13, 14։

Բ Եսա. ԽԱ. 13, 14։ ԽԳ. 5։ ԽԴ. 2։ Գլ. Լ. 10, 11։

Գ Գլ. Լ. 24։ Լ. 11։

անոր աստուածներուն, ու թա-
գաւորներուն, այսինքն Փարաւո-
նին, ու անոր ապաւինողներուն
26 այցելութիւն պիտի ընեմ. Եւ
զանոնք՝ անոնց հոգին փնտռողնե-
րուն ձեռքը, ու Բաբելոնի Նա-
բուգոդոնոսոր թագաւորին ձեռ-
քը, ու անոր ծառաներուն ձեռ-
քը պիտի մատնեմ. և ետքը ետ-
քը առջի օրերուն պէս պիտի բնա-
կուի՝ կ՚ըսէ Տէրը։
27 Բայց դուն ո՛վ իմ ծառաս Յա-
կոբ՝ մի՛ վախնար, ու ո՛վ Իսրայէլ՝
մի՛ զարհուրիր. քանզի ահա ես
քեզ հեռուէն՝ և քու սերունդդ
իրենց գերութեանը երկրէն պիտի
ազատեմ. ու Յակոբը պիտի դառ-
նայ, և հանդարտ ու հանգիստ պի-
տի ըլլայ. և զինքը վախցընող
28 պիտի չըլլայ։ Դուն մի՛ վախնար,
ո՛վ իմ ծառաս Յակոբ՝ կ՚ըսէ Տէ-
րը. վասն զի ես քեզի հետ եմ.
քանզի պիտի սպառեմ այն բոլոր
ազգերը՝ որոնց մէջը քեզ ցրուեցի.
բայց քեզ պիտի չսպառեմ. հա-
պա քեզ չափաւորութեամբ պիտի
խրատեմ, ու քեզ բոլորովին ան-
մեղ պիտի չհանեմ։

---

ԳԼ. ԽԷ

1—7 Փղշտացւոց կործանումը։

ԺԲԲ 600

Ա Գլ. ԻԵ. 20։ Եզեկ. ԻԵ. 15, 16։ Սոփ. Բ. 4, 5։

Բ Ամով. Ա. 6, 7, 8։

Գ Գլ. Ա. 14։ ԽԶ. 20։

Դ Եսա. Ը. 7։ Գլ. ԽԶ. 7, 8։

Ե Գլ. Ը. 16։ Նաւ. Գ. 2։

Զ Գլ. ԻԵ. 22։

Է Ծն. Ժ. 14։ Ամով. Թ. 7։

Ը Եզեկ. ԻԵ. 16։ Ամով. Ա. 8։

Թ Ամով. Ա. 7։ Մի. Ա. 16։ Սոփ. Բ. 4, 7։ Զաք. Թ. 5։

Ժ Գլ. ԻԵ. 20։

Ի Գլ. ԺԳ. 6։ ԽԱ. 5։ ԽԷ. 37։

Լ Օր. ԼԲ. 41։ Եզեկ. ԻԱ. 3, 4, 5։

1 Տէրոջը խօսքը՝ որ Երեմիա մար-
գարէին եղաւ Փղշտացւոց
վրայով՝ Փարաւոնը Գազան
2 չզարկած։ Տէրը այսպէս կ՚ըսէ.
Ահա հիւսիսէն ջուրեր կ՚ելլեն,
որ յորդած հեղեղի պէս պիտի ըլ-
լան. ու երկիրը և անոր լիութիւ-
նը, քաղաքը ու անոր բնակիչները
պիտի կոխեն. և մարդիկները պիտի
աղաղակեն, ու երկրին բոլոր բնա-
3 կիչները պիտի ոռնան։ Անոր ե-
րիվարներուն սմբակներուն ձայ-
նէն, անոր կառքերուն շաչիւնէն,
ու անիւներուն շառաչիւնէն, հայ-
րերը իրենց տղոցը պիտի չնային՝ ի-
րենց ձեռքերը թուլնալուն համար,
4 Բոլոր Փղշտացիները կորսնցընե-
լու, և Տիւրոսին ու Սիդոնին բո-
լոր մնացած օգնականները կոտ-
րելու եկող օրուանը պատճառաւ.
քանզի Տէրը Փղշտացիները՝ Կափ-
թոր կղզիին մնացորդները պիտի
5 կորսնցընէ։ Գազայի վրայ
կնտութիւն եկաւ. Ասկաղոնը իր
հովիտին մնացորդովը աւերակ ե-
ղաւ. մինչև ե՞րբ քու մարմնոյդ
վրայ կտրածներ պիտի ընես։
6 Ո՛վ Տէրոջը սուրը՝ մինչև ե՞րբ
հանդարտ չես կենար. քու պա-
տեանդ դարձիր. հանգչէ՛ ու լռէ՛։
7 Ի՞նչպէս կրնայ հանդարտ կե-

նալ . վասն զի Տէրը [ի]անոր հրա-
ման տուեր է Ասկաղոնի ու ծովե-
զերքի դէմ . հոն խրկեր է զանի-
կայ ։

ԳԼ. ԽԸ

1 Մովաբին դատաստանը՝ 7 իր հպարտութեանը համար . 11 իր անհոգութեանը համար , 14 իր մարմնաւոր վստահութեանը համար , 26 և զԱստուած ու անոր ժողովուրդը արհամարհելուն համար ։ 47 Մովաբին գերեդարձութիւնը ։

1 [ա]Մովաբի վրայով՝ զօրաց Տէրը՝
Իսրայէլին Աստուածը այս-
պէս կ'ըսէ . Վա՜յ [բ]Նաբաւին , վասն
զի աւրուեցաւ . [գ]Կարիաթեմ ամըչ-
ցաւ , ու առնուեցաւ . Մասգաբ
ամչցաւ , ու զարհուրեցաւ ։
2 [դ]Մովաբը մէյմըն ալ պիտի չպար-
ծի [ե]Եսեբոնի մէջ . անոր վրայ
չարիք խորհեցան , ըսելով . Եկէք ,
ու զանիկայ ազգ ըլլալէն կտրենք ։
Դուն ալ ով Մադմէն՝ պիտի
կտրուիս . քու ետեւէդ սուր կու
3 գայ ։ [զ]Որոնայիմէն աղաղակի
ձայն կու գայ . աւերում ու մեծ
4 կոտորած կայ ։ Մովաբը կոտրե-
ցաւ . անոր պզտիկ տղաքները ա-
5 ղաղակ վերցուցին ։ [է]Քանզի Ղուի-
թի զառ'ի վերին վրայ մեծ լացով
պիտի ելլեն . քանզի Որոնայիմի
զառ'ի վայրին վրայ թշնամիները
կոտորածի աղաղակ լսեցին ։
6 [ը]Փախէ՛ք , ձեր անձը ազատեցէ՛ք ,
և [թ]անապատի մէջ թափառողին
7 պէ՛ս եղիք ։ Քանզի քու գործքե-
րուդ ու գանձերուդ ապաւինելուդ
համար՝ դուն ալ պիտի առնուիս . և
[ժ]Քամովը գերութեան պիտի եր-
թայ իր [ի]քուրմերովը ու իր իշխան-
8 ներովը մէկտեղ ։ Եւ [լ]ամէն քա-
ղաքի վրայ կործանողը պիտի գայ .
ու քաղաք մը պիտի չազատի .
հովիտը պիտի կորսուի , ու դաշտը
պիտի աւրուի , ինչպէս որ Տէրը
9 ըսաւ ։ [խ]Մովաբին թեւեր տուէք ,
որ թռչելով փախչի . ու անոր
քաղաքները ամայի պիտի ըլլան՝
10 բնակիչ չունենալով ։ [ծ]Տէրոջը
գործը *նենգութեամբ կատարողը
անիծեա՜լ ըլլայ , ու իր սուրը ա-
րիւնէն խնայողը անիծեալ ըլլայ ։
11 Մովաբը իր տղայութենէն 'ի վեր
հանգստութեան մէջ էր . ու [կ]գինիի
պէս իր մրուրին վրայ կը նստէր .
և ամանէ աման չթափուեցաւ , ու
գերութեան չգնաց . անոր համար
իր համը իր մէջը մնաց , ու հոտը
12 չփոխուեցաւ ։ Ուստի ահա օրեր
կու գան՝ կ'ըսէ Տէրը , որ անոր
փոխադրողներ պիտի խրկեմ , ու
զանիկայ պիտի փոխադրեն . և ա-
նոր ամանները պիտի պարպեն , ու
տիկերը կտոր կտոր պիտի ընեն ։

Ն. Ք. Ա. Ք. ԻԻԸ 600

ի Եզեկ. ժդ. 17 ։

ա Եսա. ժե. ժզ ։ Գլ. իե. 21 ։ իէ. 3 ։ Եզեկ. իե. 9 ։ Ամով. բ. 1, 2 ։
բ Թուոց. լբ. 38 ։ լգ. 47 ։ Եսա. ժե. 2 ։
գ Թուոց. լբ. 37 ։
դ Եսա. ժզ. 14 ։
ե Եսա. ժե. 4 ։
զ Հմր 5 ։
է Եսա. ժե. 5 ։
ը Գլ. ծա. 6 ։
թ Գլ. ժէ. 6 ։
ժ Թուոց. իա. 29 ։ Դատ. ժա. 24 ։ Տնօրէն. խզ. 1, 2 ։ Գլ. խդ. 12 ։
ի Գլ. խթ. 3 ։
լ Գլ. կ 26 ։ Հմր 15 ։
խ Սաղ. ծե. 6 ։ Հմր 23 ։
ծ Տնօրէն. Դատ. ե. 23 ։ Ա Թագ. ժե. 3, 9 ։ Գ Թագ. ի. 42 ։
* Կամ՝ թուլութեամբ
կ Սոփ. ա. 12 ։

13 Եւ Մովաբը [հ]Քամովսէն պիտի ա-
մըչնայ , ինչպէս որ Իսրայէլի տունը
իր ապաւինած [ձ]Բեթէլէն ամըչ-
14 ցաւ ։ Ի՞նչպէս կ'ըսէք թէ՝ [ղ]Մենք
կտրիճներ ենք , ու պատերազմի
համար զօրաւոր մարդիկներ ենք ։
15 [ճ]Մովաբը աւրուեցաւ , և անոր քա-
ղաքները †այրեցան . ու անոր ըն-
տիր երիտասարդները [մ]մորթուելու
իջան՝ կ'ըսէ [յ]ան Թագաւորը՝ որուն
16 անունը Զօրաց Տէր է ։ Մովաբին
կորուստը գալու մօտ է , և անոր
պատուհասը խիստ կ'արտորայ ։
17 Ո՛վ անոր բոլորտիքը եղողներ՝ա-
մէնքդ զանիկայ ողբացէք , ու ըսէք
դուք ամէնքդ որ անոր անունը
գիտէք . [ն]Զօրութեան գաւազանը՝
պարծանաց ցուպը ի՜նչպէս կոտրե-
18 ցաւ ։ [շ]Ո՛վ Դեբոնի մէջ բնակող
աղջիկ՝ փառքէն իջի՛ր , ու ծարա-
ւութեան մէ՛ջ նստէ . վասն զի
[չ]Մովաբը կործանողը քու վրադ
պիտի ելլէ , և քու պարիսպներդ
19 պիտի աւրէ ։ [պ]Ճամբու վրայ կայ-
նէ՛ , ու դիտէ՛ , ո՛վ [ջ]Արոերի բնա-
կիչ . փախչողին ու ազատողին հար-
ցո՛ւր , [ռ]ըսէ՛ թէ՝ Ի՞նչ եղաւ ։
20 Մովաբը ամչցաւ , վասն զի կոտ-
րեցաւ . [ս]հեծէ , ու աղաղակէ՛ .
Մովաբին աւրուիլը [վ]Առնոնի մէջ
21 պատմեցէ՛ք ։ Եւ հզաշտային երկ-
րին վրայ՝ Քօղօնի , Յասսայի , ու
Մեփայաթի վրայ դատաստան ե-
22 կաւ . Նաև Դեբոնի վրայ , Նա-
բաւի վրայ , Բեթդեբլաթեմի վը-
23 րայ , Ու Կարիաթեմի վրայ , և
Բեթգամուղի վրայ , ու Բեթմա-
24 ւոնի վրայ , Եւ [տ]Կարիօթի վրայ ,
ու Բօսրայի վրայ , ու Մովաբի
երկրին բոլոր քաղաքներուն վրայ
թէ՛ հեռաւոր և թէ մօտաւոր ։
25 [ր]Մովաբին եղջիւրը կտրուեցաւ , ու
[ց]բազուկը կոտրեցաւ՝ կ'ըսէ Տէրը ։
26 [ւ]Զանիկայ գինովցուցէ՛ք . վասն զի
Տէրոջը դէմ հպարտացաւ . ու
Մովաբը թող իր փսխունքին մէ՛ջը
թաւալի , և ինքն ալ ծաղր ըլլայ ։
27 [փ]Միթէ Իսրայէլը քեզի ծաղր չե-
ղա՞ւ . [ք]անիկայ գողերո՞ւ մէջ գըտ-
նուեցաւ , որ դուն քանի որ անոր
վրայով կը խօսէիր՝ գլուխ կը շար-
28 ժէիր ։ Ո՛վ Մովաբի բնակիչներ՝
քաղաքները թողուցէ՛ք [օ]վէմերու
մէ՛ջ բնակեցէք . ու փոսի բերնին
քովերը իր բոյնը շինող աղաւնիին
պէ՛ս եղիք ։
29 [ֆ]Մովաբին ամբարտաւանութիւ-
նը լսեցինք . անիկայ խիստ ամբար-
տաւան է . անոր հպարտութիւնը ,
ամբարտաւանութիւնը , գոռո-
ռութիւնը , ու սրտին բարձրու-
30 թիւնը լսեցինք ։ Ես անոր սրտմտու-
թիւնը գիտեմ՝ կ'ըսէ Տէրը , բայց

Ն. Ք. Ա. Ք. ԻԻԸ 600

հ Դատ. ժա. 24 ։ Գ Թագ. ժա. 7 ։
ձ Գ Թագ. ժբ. 29 ։
ղ Ովս. ժ. 6 ։
ճ Եսա. ժզ. 6 ։
մ Հմր 8, 9, 18 ։
† Եբր. վեր ելան .
յ Գլ. ծ. 27 ։
ն Գլ. խզ. 18 ։ ծա. 57 ։
ն Տնօրէն. թ. 4 ։ ժդ. 4, 5 ։
շ Թուոց. իա. 30 ։ Եսա. ժե. 2 ։ Տնօրէն. իէ. 1 ։ Գլ. խզ. 19 ։
չ Հմր 8 ։
պ Ա Թագ. դ. 13 ։
ջ Բ Օր. բ. 36 ։
ռ Եսա. ժզ. 7 ։
ս Տնօրէն Թուոց. իա. 13 ։
վ Հմր 8 ։
տ Ամով. բ. 2 ։
ր Սաղ. հե. 10 ։
ց Տնօրէն Եզեկ. լ. 21 ։
ւ Գլ. իե. 15, 27 ։
փ Սոփ. բ. 8 ։
ք Տնօրէն Գլ. բ. 26 ։
օ Սաղ. ծե. 6, 7 ։ Հմր 9 ։
ֆ Եսա. ժզ. 6, &c. ։

Ն. Ք. Գ.
Իրր 600

ա Ես. ժզ. 6 ։ Գլ. Ծ. 36 ։
բ Ես. ժե. 5 ։ ժզ. 7, 11 ։
գ Ես. ժզ. 8, 9 ։
դ Ես. ժզ. 10 ։ Յովել. ա. 12 ։
ե Ես. ժե. 4, 5, 6 ։
զ Ես. ժե. 5, 6 ։ Հմր 5 ։
է Ես. ժե. 2 ։ ժզ. 12 ։
ը Ես. ժե. 5 ։ ժզ. 11 ։
թ Ես. ժե. 7 ։
ժ Ես. ժե. 2. 3 ։ Գլ. խէ. 5 ։
ի Ծն. լէ. 34 ։
լ Գլ. իբ. 28 ։
խ Բ Օր. իբ. 49 ։ Գլ. խԹ. 22 ։ Դան. է. 4 ։ Ովս. ը. 1 ։ Ամբ. ա. 8 ։
ծ Ես. ը. 8 ։
* Կամ՝ Կարիօթը կ'առնուի ։ Հմր 24 ։
կ Ես. ժգ. 8 ։ իա. 3 ։ Գլ. լ. 6 ։ խԹ. 22, 24 ։ Ծ. 43 ։
հ Սաղ. ձգ. 4 ։ Ես. է. 8 ։
ձ Ես. իդ. 17, 18 ։

պարապ է . անոր սնապարծ խօս-
31 քերը պարապ պիտի ըլլան ։ Ուստի
բ Մովաբին համար պիտի ողբամ ,
ու բոլոր Մովաբին համար պիտի
աղաղակեմ . Կիրհարեսի մարդիկ-
ներուն համար սուգ պիտի բռնուի ։
32 գ Ո՛վ Սեբամայի որթը՝ քու վրադ
Յազէրի լացովը պիտի լամ . քու
շառաւիղներդ ծովէն անցնելով՝
մինչեւ Յազէրի ծովը հասեր էին .
քու ամառնային պտուղիդ վրայ ,
եւ այգեկութիդ վրայ աւարառու
33 ինկաւ ։ Ու դ պտղաբեր արտերէն
եւ Մովաբի երկրէն՝ ուրախութիւնը
ու ցնծութիւնը պիտի վերնայ . ու
հնձաններէն գինին դադրեցուցի .
ցնծութեամբ կոխող պիտի չկո-
խուի , այն ցնծութեան ձայն պիտի
34 չլսուի ։ ե Եսեբոնին աղաղակէն
մինչեւ Եղէաղէ , մինչեւ Յասսա
իրենց ձայնը տուին , իբրեւ տարե-
կան երինջի պէս՝ զՍեգովրէն մինչեւ
Որոնայիմ . քանզի Նեմերիմի ջու-
35 րերը անգամ կ'աւրուին ։ Եւ
Մովաբէն՝ է բարձր տեղը ողջակէզ
մատուցանողը , ու իր աստուած-
ներուն խունկ ծխողը պիտի վերցը-
նեմ՝ կ'ըսէ Տէրը ։
36 Աս պատճառաւ ը իմ սիրտս Մո-
վաբի համար սրինգներու պէս պի-
տի հնչէ , ու Կիրհարեսի մարդոցը
համար իմ սիրտս սրինգներու պէս
պիտի հնչէ . վասն զի թ անոնց ստա-
ցած հարստութիւնը կորսուեցաւ ։
37 Քանզի ժ ամէն գլուխ կնտակ պիտի
ըլլայ , եւ ամէն մօրուք պիտի կըտ-
րուի . ու ամէն ձեռքերու վրայ
կտրածներ պիտի ըլլայ , եւ ի ամէն
մէջքերու վրայ քուրձ պիտի ըլլայ ։
38 Մովաբին բոլոր տանիքներուն վը-
րայ , ու անոր փողոցներուն մէջը
բոլորովին կոծ պիտի ըլլայ . վասն
զի Մովաբը կոտրեցի լ անանկ ամա-
նի մը պէս , որուն մէկը չհաճիր՝
39 կ'ըսէ Տէրը ։ Ի՛նչպէս կոտրեցաւ
Մովաբը , ու ի՛նչպէս ամօթով
կռնակ դարձուց՝ ըսելով , պիտի ող-
բան . ու Մովաբը ամէն իր բոլոր-
տիքը եղողներուն՝ խայտառակու-
թեան ու սոսկումի պատճառ պիտի
40 ըլլայ ։ Վասն զի Տէրը այսպէս
կ'ըսէ . Ահա խ Արծիւի պէս
պիտի թռչի . ու ծ իր թեւերը Մո-
41 վաբի վրայ պիտի տարածէ ։ * Քա-
ղաքները կ'առնուին , եւ բերդերը
կը նուաճին . ու ան օրը կ Մովաբի
զօրաւորներուն սիրտը՝ իր երկանցը
մէջ եղող կնկան սրտին պէս պիտի
42 ըլլայ ։ Եւ Մովաբը հ ժողովուրդ
ըլլալէն պիտի կորսուի . վասն զի
43 Տէրոջը դէմ հպարտացաւ ։ ձ Ո՛վ
Մովաբի բնակիչ՝ քու վրադ վախ ,
գուբ ու որոգայթ պիտի ըլլայ՝ կ'ը-
44 սէ Տէրը ։ Վախէն փախչողը՝ գուբը
պիտի իյնայ . եւ գուբէն ելլողը՝
որոգայթի մէջ պիտի բռնուի .
քանզի ղ անոր վրայ՝ Մովաբին վրայ՝
անոնց այցելութեան տարին պիտի
45 բերեմ՝ կ'ըսէ Տէրը ։ † Ուժէն
փախչողները Եսեբոնի հովանիին
տակը կայնեցան . բայց ճ Եսեբոնէն
կրակ , ու Սեհոնին մէջէն բոց ե-
լաւ , եւ մ Մովաբին ծայրը , ու ա-
ղաղակողներուն գագաթը կերաւ ։
46 յ Վա՜յ քեզ՝ Մովաբ . Քամովսի ժո-
ղովուրդը կորսուեցաւ . քանզի
քու տղաքներդ գերի առնուեցան ,
ու աղջիկներդ գերութեան գացին ։
47 Բայց ն ետքի օրերը՝ Մովաբին գե-
րութիւնը պիտի դարձընեմ , կ'ըսէ
Տէրը ։
Մովաբին դատաստանը մինչեւ
հոս է ։

## ԳԼ. ԽԹ

1 Ամմոնացւոց դատաստանը . 6 անոնց դերե-
դարձութիւնը ։ 7 Եդովմի , 23 Դամասկոսի ,
28 Կեդարի , 30 Հասորի , 34 ու Եղամի դա-
տաստանները ։ 39 Եղամի գերեդարձութիւ-
նը ։

1 ա Ամմոնի որդւոցը վրայով Տէրը
այսպէս կ'ըսէ . Միթէ Իսրա-
յէլը տղաքներ չունի՞ . միթէ ան-
կայ ժառանգ չունի՞ . ինչո՞ւ Մեղ-
քոմը բ Գադին ժառանգ եղաւ , ու
իր ժողովուրդը՝ անոր քաղաքնե-
2 րուն մէջը բնակեցաւ ։ Ասոր համար
ահա օրեր կու գան՝ կ'ըսէ Տէրը , որ
Ամմոնի որդւոցը գ Ռաբբային մէջ
պատերազմի աղաղակ լսել պիտի
տամ . ու անիկայ աւերակներու
դէզ պիտի ըլլայ , եւ անոր ‡ դե-
ղերը կրակով պիտի այրին . ու Իս-
րայէլը իրեն տիրողներուն վրայ պի-
տի տիրէ՝ կ'ըսէ Տէրը ։
3 Ողբա՛ ո՛վ Եսեբոն . վասն զի Գա-
յին կորսուեցաւ . աղաղակեցէ՛ք ո՛վ
Ռաբբայի աղջիկները . դ Քուրձեր
հագէք , լացէ՛ք , ու ցանգէ ցանգ
վազեցէք . վասն զի ե Մեղքոմը գե-
րութեան կ'երթայ՝ իր քուրմե-
րովը ու իշխաններովը մէկտեղ ։
4 Ինչո՞ւ զ քու հովիտներովդ կը պար-
ծիս . քու հովիտդ աւրեցաւ՝ ո՛վ
է ապստամբ աղջիկ , որ քու գանձե-
րուդ ապաւիներ էիր , ը ըսելով
5 Ո՞վ իմ վրաս պիտի կրնայ գալ ։ Ա-
հա ես՝ կ'ըսէ զօրաց Տէր Եհովան՝
քու վրադ վախ պիտի բերեմ , քու
բոլորտիքդ եղողներէն . եւ ամէն
մէկը իր առջեւի ճամբան երթալով՝
պիտի ցրուիք . ու փախստական-
6 ները ժողվող պիտի չըլլայ ։ Եւ
թ անկէ ետքը Ամմոնի որդւոցը գե-
րութիւնը պիտի դարձընեմ՝ կ'ըսէ
Տէրը ։
7 ժ Եդովմի վրայով զօրաց Տէրը

Ն. Ք. Գ.
Իրր 600

ղ Տես Գլ. ժա. 23 ։
† Կամ՝ Փախչողները ուժէ ինկած՝
ճ Թու. իա. 28 ։
մ Տես Թու. իդ. 17 ։
յ Թու. իա. 29 ։
ն Գլ. խԹ. 6, 39 ։
ա Եզեկ. իա. 28 ։ իե. 2 ։ Ամով. ա. 13 ։ Սոփ. բ. 8, 9 ։
բ Ամով. ա. 13 ։
գ Եզեկ. իե. 5 ։ Ամով. ա. 14 ։
‡ Եբր. աղջիկները
դ Ես. լբ. 11 ։ Գլ. դ. 8 ։ զ. 26 ։
ե Գ Թագ. ժա. 5. 33 ։
զ Գլ. խբ. 7 ։ Ամով. ա. 15 ։
է Գլ. գ. 14 ։
ը Գլ. իա. 13 ։
թ Հմր 39 ։ Գլ. խը. 47 ։
ժ Եզեկ. իե. 12 ։ Ամով. ա. 11 ։

այսպէս կ'ըսէ. Արդեօք Թեմանի
մէջ՝ ալ իմաստութիւն չկա՞յ. —
ւ հանճարեղներէն խորհուրդը կոր-
սուեցա՞ւ. անոնց իմաստութիւնը
8 հատա՞ւ ։ Փախէ՛ք, դարձէ՛ք,
խորունկ տեղուա՛նք բնակեցէ՛ք՝ ով
Դեդանի բնակիչներ. վասն զի Ե-
սաւին կորուստը՝ անոր այցելու-
թիւն ըրած ժամանակս՝ անոր վրայ
9 կը բերեմ ։ Թէ որ քեզի կթողներ
գային. միթէ ճիւեր պիտի չթո-
ղուի՞ն. թէ որ գիշերով գողեր
գային. իրենց բաւական եղածին
10 չափ պիտի յափշտակէին ։ Բայց
ես Եսաւը մերկացուցի. անոր ծա-
ծուկ տեղերը բացի. ու անիկայ
պահուըտելու կարող չէ. անոր
զաւակները, անոր եղբայրները ու
անոր դրացիները կորսուեցան, և
11 ինքը չկայ ։ Որբերդ թող տուր,
ես զանոնք ողջ կը պահեմ. ու քու
որբեւարիներդ թող ինծի ապաւի-
12 նին ։ Վասն զի Տէրը այսպէս կ'ը-
սէ. Ահա անոնք որ բաժակը խմե-
լու պարտաւոր չէին, անշուշտ պի-
տի խմեն. իսկ դուն բոլորովին ան-
պատի՞ժ պիտի մնաս. անպատիժ
պիտի չմնաս. հապա անպատճառ
13 պիտի խմես ։ Վասն զի իմ ան-
ձիս վրայ երդում կ'ընեմ, կ'ըսէ
Տէրը, որ Բոսրան ամայութիւն,
նախատինք, աւերակ ու անէծք
պիտի ըլլայ. և անոր ամէն քա-
ղաքները յաւիտենական աւերակ-
ներ պիտի ըլլան ։
14 Տէրոջը կողմանէ լուր լսեցի, ու
ազգերուն դեսպան խրկուած է՝ որ
ըսէ. Ժողվուեցէ՛ք, և անոր վրայ
գացէ՛ք, ու պատերազմի ելէ՛ք,
15 քանզի ահա քեզ ազգերու մէջ
պզտիկ, — մարդոց մէջ անարգ
16 ըրի ։ Քու ահաւորութիւնդ՝ քու
սրտիդ հպարտութիւնը քեզ խա-
բեցին, ով վէմին խոռոչներուն
մէջը բնակող, ու բարձր բլուրնե-
րուն փակչող. Թէև քու բոյնդ
արծիւի պէս բարձրերը շինես, քեզ
անկէ պիտի իջեցնեմ, կ'ըսէ Տէ-
17 րը ։ Ու Եդովմը ամայի պիտի
ըլլայ. անկէ ամէն անցնողը պիտի
հիանայ, և անոր բոլոր հարուած-
18 ներուն համար պիտի սուլէ ։ Սո-
դոմի ու Գոմորի, և անոր շրջակայ
քաղաքներուն կործանմանը պէս կ'ը-
սէ Տէրը, հոն ալ մարդ մը պիտի
չնստի, ու անոր մէջ մարդու զա-
19 ւակ պիտի չբնակի ։ Ահա անիկայ
առիւծի պէս ամուր բնակարանին
վրայ պիտի ելլէ՝ Յորդանանու
ջուրերուն յորդելէն. բայց անոր
վրայէն շուտով պիտի փախցընեմ
զանիկայ. ու ո՞վ է ան ընտրեալը՝
որ անոր վրայ դնեմ. վասն զի ին-
ծի նման ո՞վ կայ. ու ինծի հետ
ո՞վ պիտի վիճաբանի. և ո՞վ է ան
հովիւը՝ որ իմ առջևս պիտի կե-
20 նայ ։ Անոր համար Եդովմի վրա-
յով Տէրոջը խորհած խորհուրդը,
ու Թեմանի բնակչացը վրայով մը-
տածած մտածմունքը մտիկ ըրէք.
հօտին պինտ պզտիկը անպատճառ
պիտի քշէ զանոնք. անշուշտ ա-
նոնց բնակարանները անոնց հետ
21 պիտի աւրէ ։ Անոնց իյնալուն
ձայնէն՝ երկիրը կը շարժի. անոնց
աղաղակին ձայնը մինչև Կարմիր
22 ծովը կը լսուի ։ Ահա անիկայ ար-
ծիւի պէս բարձրանալով պիտի
թռչի, ու իր թևերը Բոսրայի վրայ
պիտի տարածէ. և ան օրը Եդովմի
զօրաւորներուն սիրտը՝ իր երկանքը
մէջ եղող կնկան սրտին պէս պիտի
ըլլայ ։
23 Դամասկոսի վրայով ։
Եմաթը ու Արփաթը ամչցաւ.
քանզի գէշ լուր լսեցին, — մարե-
ցան. ծովուն մէջը տառապանք
կայ. — անիկայ չկրնար հանդար-
24 տիլ. Դամասկոսը տկարացաւ.
փախչելու դարձաւ. արհաւիրքը
անոր վրայ հասաւ. զանիկայ ծննդ-
դական կնոջ պէս նեղութիւն ու
25 ցաւեր բռնեցին ։ Ինչպէ՞ս չթո-
ղուեցաւ երևելի քաղաքը, իմ ու-
26 րախութեանս քաղաքը ։ Ուստի
անոր կտրիճները իր հրապարակնե-
րուն մէջը պիտի իյնան, և բոլոր
պատերազմական մարդիկները ան
օրը բնաջինջ պիտի ըլլան, կ'ըսէ
27 զօրաց Տէրը ։ Ու Դամասկոսի
պարսպին մէջ կրակ պիտի բը-
ռընկցընեմ, ու Բենադադին պա-
լատները պիտի ուտէ ։
28 Կեդարու վրայով, ու Հասորի
թագաւորութեանցը վրայով, ո-
րոնք Բաբելոնի Նաբուգոդոնոսոր
թագաւորը զարկաւ, Տէրը այսպէս
կ'ըսէ. Ելէ՛ք, Կեդարու վրայ գա-
ցէք, և Արևելքի բնակիչները
29 ջարդեցէ՛ք ։ Անոնց վրանները ու
հօտերը պիտի առնեն. Անոնց վա-
րագոյրները, ու բոլոր կարասինե-
րը, և ուղտերը իրենց համար պիտի
տանին. ու անոնց ձայն պիտի տը-
րուի՝ Թէ ամէն կողմանէ վախ
կայ ։
30 Փախէ՛ք, շուտով հեռացէ՛ք,
խորունկ տեղուա՛նք բնակեցէ՛ք՝ ով
Հասորի բնակիչներ, կ'ըսէ Տէրը.
վասն զի Բաբելոնի Նաբուգոդո-
նոսոր թագաւորը ձեզի դէմ խոր-
հուրդ մը խորհեցաւ, ու ձեզի դէմ
դիտաւորութիւն մը մտածեց ։
31 Ելէ՛ք, ու հանգստութեան և
ապահովութեան մէջ բնակող ազ-
գին գացէ՛ք՝ կ'ըսէ Տէրը, որ անի-

Ն. Ք. Գ. Ք. Իրր 600
ե Աբդ. 8. Եսայ. ԻԹ. 14. Հռմ. 30.
Գ Գլ. ԻԵ. 23.
Աբդ. 5.
Մաղ. Ա. 3.
Եսայ. ԺԵ. 14.
Գլ. ԻԵ. 28. 29. Աբդ. 16.
Ծն. ԻԲ. 16. Եսայ. ԽԵ. 23. Ամով. Ա. 8.
Եսայ. ԼԴ. 6. Կդ. 1.
Աբդ. 1. 2. 3.
Աբդ. 4.
Յոբ. Լ. 27.
Ամով. Թ. 2.
Գլ. ԺՐ. 16. Ծ. 13.
Ծն. ԺԹ. 25. Օր. ԻԹ. 23. Գլ. Ծ. 40. Ամով. Դ. 11.
Գլ. Ծ. 44.
Գլ. ԺՐ. 5.
Եւ. ԺԵ. 11.

Կամ՝ ով ինծի ժամանակ պիտի որոշէ. Յոբ. ԽԱ. 10.
Գլ. Ծ. 45.
Գլ. Ծ. 46.
Գլ. Դ. 13. ԽԸ. 40. 41.
Եսայ. ԺԷ. 1. ԼԷ. 13. Ամով. Ա. 3. Զաք. Թ. 1. 2.
Եսայ. ԾԷ. 20.
Եսայ. ԺԳ. 8. Գլ. Դ. 31. Զ. 24. Լ. 6. ԽԸ. 41. Հռմ 22.
Գլ. ԼԴ. 9. Ծա. 41.
Գլ. Ծ. 30. Ծա. 4.
Ամով. Ա. 4.
Եսայ. ԻԱ. 13.
Դատ. Զ. 3. Յոբ. Ա. 3.
Սաղ. ՃԻ. 5.
Գլ. Զ. 25. ԽԶ. 5.
Հռմ. 8.
Եզեկ. ԼԸ. 11.

Ն. Ք. Զ. Ռ. Իբր 600

կայ դռներ ու նիգեր չունի , ու
32 առանձին կը բնակի ։ Եւ անոնց
ուղտերը աւար պիտի ըլլայ , ու
անոնց խաշինքներուն բազմութիւ-
նը պիտի յափշտակուի . և իրենց
մօրուքին ծայրը կտրողները ամէն
հովի պիտի ցրուեմ , ու անոնց կոր-
ծանումը ամէն կողմէն պիտի բե-
33 րեմ՝ կ՚ըսէ Տէրը . Եւ Հասորը
ճագարներու բնակարան՝ յաւի-
տենական ամայութիւն պիտի ըլ-
լայ . հոն մարդ պիտի չնստի , ու
հոն մարդու զաւակ պիտի չբնակի ։
34 Յուդայի թագաւորին Սեդե-
կիային թագաւորութեանը սկիզ-
բը՝ Եղամի վրայով Երեմիա մար-
գարէին եղած Տէրոջը խօսքն է , որ
ըսաւ .
35 Զօրաց Տէրը այսպէս կ՚ըսէ . Ա-
հա՛ ես Եղամի աղեղը՝ անոնց զօ-
րաւոր զօրութիւնը պիտի կոտ-
36 րեմ ։ Ու Եղամի վրայ՝ երկինքին
չորս կողմէն չորս հովերը պիտի
բերեմ , և զանոնք աս բոլոր հո-
վերուն պիտի ցրուեմ . ու պիտի
չըլլայ մէկ ազգ մը , որուն Եղամի
37 փախստականները չերթան ։ Ու
Եղամացիք՝ իրենց թշնամիներուն
առջեւ , և իրենց հոգին փնտռող-
ներուն առջեւ պիտի վախցընեմ ,
ու անոնց վրայ պատուհաս պիտի
բերեմ , այսինքն իմ սաստիկ բար-
կութիւնս՝ կ՚ըսէ Տէրը . և անոնց
ետեւէն սուր պիտի խրկեմ , մինչև
38 որ զանոնք հատցընեմ ։ Ու իմ
աթոռս Եղամի մէջ պիտի դնեմ .
և անկէ թագաւոր ու իշխաններ
պիտի կորսնցընեմ՝ կ՚ըսէ Տէրը ։
39 Բայց վերջի օրերը՝ Եղամի գերու-
թիւնը պիտի դարձընեմ՝ կ՚ըսէ
Տէրը ։

## ԳԼ. Ծ

1 , 9 , 21 , 35 Բաբելոնի դատաստանը . 4 , 17 , 33 Իսրայէլի փրկութիւնը ։

1 Բաբելոնի վրայով՝ Քաղդէացւոց
երկրին վրայով՝ Երեմիա մար-
գարէին ձեռքովը Տէրոջը խօսած
խօսքը ։
2 Ազգերուն մէջ պատմեցէք . հը-
րատարակեցէ՛ք , ու դրօշ վերցու-
ցէ՛ք . հրատարակեցէ՛ք ու մի՛ ծած-
կէ՛ք , ու ըսէ՛ք . Բաբելոնը առ-
նուեցաւ . Բէլը ամչցաւ . Մա-
րոդաքը կոտրեցաւ . անոր ար-
ձանները ամչցան . անոր կուռքերը
3 կոտրուեցան ։ Վասն զի անոր վրայ
հիւսիսէն ազգ մը ելաւ . անիկայ
անոր երկիրը աւերակ պիտի ընէ .
ու հոն բնակիչ պիտի չըլլայ մար-
դէ մինչև անասուն պիտի փախչին
երթան ։
4 Ան օրերը ու ան ժամանակը՝
կ՚ըսէ Տէրը՝ Իսրայէլի որդիքը՝ ի-
րենք , ու Յուդայի որդիքը մէկտեղ
պիտի գան , երթալով ու լալով
պիտի երթան , և իրենց Տէր Ա-
5 ստուածը պիտի փնտռեն ։ Սիօ-
նի համար պիտի հարցընեն՝ իրենց
երեսը դէպ 'ի հոն դարձընելով .
Եկէ՛ք , ու Տէրոջը յարինք՝ յաւի-
տենական ու անմոռաց ուխտով
մը ։
6 Իմ ժողովուրդս կորսուած ոչ-
խարներու պէս եղաւ . զանոնք ի-
րենց հովիւները մոլորցուցին . զա-
նոնք լեռներու վրայ պտըտցու-
ցին . անոնք ալ լեռնէ լեռ ու բլուրէ
բլուր գացին , ու իրենց մակաղատե-
7 ղը մոռցան ։ Ամէն գտնողները
զանոնք կերան . ու անոնց թըշ-
նամիները ըսին . Մենք յանցանք
չունինք . վասն զի անոնք՝ արդա-
րութեան բնակարան եղող Տէրոջը
դէմ , ու իրենց հայրերուն յոյսը
եղող Տէրոջը դէմ մեղք գործեցին ։
8 Բաբելոնի մէջէն փախէ՛ք , ու
Քաղդէացւոց երկրէն ելէ՛ք , և հօ-
տերուն առջեւէն գացող նոխազնե-
9 րուն պէ՛ս եղէք ։ Քանզի ահա՛
ես՝ Բաբելոնի վրայ՝ հիւսիսի երկրէն
մեծ ազգերու ժողովք պիտի ար-
թընցընեմ ու հանեմ . և անոր
առջեւ գունդերով պիտի շարուին .
անկէ պիտի առնուի . անոնց նե-
տերը՝ յաջողակ պատերազմողի նե-
տերուն պէս պարապ պիտի չդառ-
10 նան ։ Եւ Քաղդէացւոց երկիրը
աւար պիտի ըլլայ , ու զանիկայ
բոլոր թալլողները պիտի կշտանան՝
կ՚ըսէ Տէրը ։
11 Որովհետև դուք ուրախացաք ու
խնդացիք՝ ով իմ ժառանգու-
թեանս կողոպտիչները . * կանանչ
խոտերու մէջ արածուող երինջի
պէս ցաթկեցիք , ու երիվարներու
12 պէս վրնջեցիք . Ձեր մայրը խիստ
ամչցաւ . ձեզ ծնանողը ամօթով
եղաւ . ահա անիկայ ազգերուն յե-
տինը , անապատ , անջուր ու ա-
13 մայի պիտի ըլլայ ։ Տէրոջը բար-
կութեանը պատճառաւ հոն մարդ
պիտի չբնակի . հապա բոլորովին
ամայի պիտի ըլլայ . Բաբելոնէն
ամէն անցնողը , անոր բոլոր հա-
րուածներուն վրայ պիտի հիանայ
14 ու պիտի սուլէ ։ Բաբելոնին դէմ
շուրջանակի շարուեցէ՛ք՝ ով բոլոր
աղեղ լարողներ . անոր նետեցէ՛ք .
նետին մի՛ խնայէք . քանզի անիկայ
15 Տէրոջը դէմ մեղք գործեց ։ Անոր
դէմ շուրջանակի աղաղակ վերցու-
ցէք . անիկայ իր ձեռքը տուաւ .
անոր հիմերը կործանեցան . անոր
պարիսպները աւրեցան . վասն զի
ասիկայ Տէրոջը վրէժխնդրու-

ը Թուոց. իգ. 9 ։ Բ Օր. լգ. 28 ։ Միք. է. 14 ։
թ Գլ. թ. 26 ։ իե. 23 ։
ժ Եզեկ. ե. 10 ։ Հմր 36 ։
ի Գլ. թ. 11 ։ ժ. 22 ։
լ Հմր 18 ։
598
խ Գլ. իե. 25 ։
ծ Տեառն Եա. իբ. 6 ։
կ Հմր 32 ։
հ Գլ. թ. 16 ։ խը. 2 ։
ձ Տեառն Գլ. խգ. 10 ։
ղ Գլ. խը. 47 ։ Հմր 6 ։
595
ա Եա. ժգ. 1 ։ իա. 1 ։ իէ. 1 ։
բ Եա. խղ. 1 ։ Գլ. ծա. 44 ։
գ Տեառն Գլ. խդ. 12 , 13 ։
դ Գլ. ծա. 48 ։
ե Եա. ժգ. 17 , 18 , 20 ։ Հմր 39 , 40 ։

Ն. Ք. Զ. Ճ. 595
զ Ովս. ա. 11 ։
է Եզր. գ. 12 , 13 ։ Սաղ. ճիզ. 5 , 6 ։ Գլ. լա. 9 ։ Զաք. ժբ. 10 ։
ը Ովս. գ. 5 ։
թ Գլ. լա. 31 ։ լբ. 40 ։
ժ Եա. ծգ. 6 ։ Հմր 17 ։ Ա Պետ. բ. 25 ։
ի Գլ. բ. 20 ։ գ. 6 , 23 ։
լ Սաղ. հթ. 7 ։
խ Գլ. խ. 2 , 3 ։ Զաք. ժա. 5 ։
ծ Տեառն Գլ. բ. 3 ։ Դան. թ. 16 ։
կ Սաղ. ղա. 1 ։
հ Սաղ. իբ. 4 ։
ձ Եա. խը. 20 ։ Գլ. ծա. 6 , 45 ։ Զաք. բ. 6 , 7 ։ Յայտ. ժը. 4 ։
ղ Գլ. իե. 14 ։ ծա. 27 ։ Հմր 3 , 41 ։
ճ Հմր 14 , 29 ։
մ Բ Թագ. ա. 22 ։
յ Յայտ. ժէ. 16 ։
ն Եա. խէ. 6 ։
* կամ՝ Ցորեն ծեծող
շ Ովս. ժ. 11 ։
ո Գլ. իե. 12 ։
չ Գլ. խթ. 17 ։
պ Հմր 9 ։ Գլ. ծա. 2 ։
ջ Գլ. խթ. 35 ։ Հմր 29 ։
ռ Ա Մն. իթ. 24 ։ Բ Մն. լ. 8 ։ Ողբ. 5 , 6 ։ Եզեկ. ժէ. 18 ։
ս Գլ. ծա. 58 ։
վ Գլ. ծա. 6 , 11 ։

Ն. Ք. Դ.Ճ. 595

թիւնն է. անկէ վրէժ առէք. առ-
նոր՝ իր ըրածին համեմատ ըրէք։
16 Բաբելոնէն սերմանողը՝ ու հնձոց
ժամանակը մանգաղ բռնողը կոտ-
րեցէք. բռնաւոր սուրին երեսէն՝
ամէն մարդ իր ժողովուրդին պի-
տի դառնայ, ու ամէն մարդ իր եր-
կիրը պիտի փախչի։
17 Իսրայէլը ցրուած ոչխար մըն
է. առիւծները զանիկայ հալածե-
ցին. զանիկայ նախ Ասորեստա-
նի թագաւորը կերաւ. ու ետքը՝
աս Բաբելոնի Նաբուգոդոնոսոր
թագաւորը անոր ոսկորները կրծեց։
18 Անոր համար զօրաց Տէրը՝ Իսրայէ-
լին Աստուածը այսպէս կ՚ըսէ. Ահա
ես Բաբելոնի թագաւորին ու անոր
երկրին այցելութիւն պիտի ընեմ,
ինչպէս որ Ասորեստանի թագաւո-
19 րին այցելութիւն ըրի։ Ու Իս-
րայէլը իր բնակարանը պիտի դար-
ձընեմ. ու Կարմեղոսի և Բասանի
մէջ պիտի արածի. ու անոր հոգին՝
Եփրեմի լեռանը վրայ ու Գաղաա-
20 դու վրայ պիտի կշտանայ։ Այն
օրերը, ու այն ժամանակը՝ կ՚ըսէ
Տէրը՝ Իսրայէլին անօրէնութիւնը
պիտի փնտռուի, բայց անիկայ
անօրէնութիւն պիտի չունենայ. և
Յուդային մեղքերը պիտի փըն-
տռուին, բայց պիտի չգտնուին.
վասն զի իմ պահած մնացորդնե-
րուս թողութիւն պիտի ընեմ։
21 Մերաթայիմի երկրին վրայ, և
Փակուդի բնակիչներուն վրայ ե-
լիր. անոնց ետևէն աւրէ՛, ու նզովա-
ծի պէս բնաջինջ ըրէ՛ կ՚ըսէ Տէրը,
և քեզի ամէն պատուիրածիս պէս
22 ըրէ՛։ Երկրին մէջը պատերազմի
ձայն, ու մեծ կոտորած կայ։
23 Բոլոր երկրին մուրճը ինչպէս
կոտրեցաւ ու մանրեցաւ. Բաբելո-
նը ազգերուն մէջ ինչպէս աւերակ
24 եղաւ։ Քեզի որոգայթ լարեցի,
ու բռնուեցար, ո՛վ Բաբելոն.
բայց դուն չգիտցար. գտնուեցար,
ու ձեռք անցար. վասն զի Տէրոջը
25 դէմ հակառակեցար։ Տէրը իր զի-
նարանը բացաւ, ու իր բարկու-
թեան զէնքերը հանեց. քանզի
Քաղդէացւոց երկրին մէջ՝ զօրաց
26 Տէր Եհովան գործ ունի։ Երկրի
ծայրէն անոր վրայ եկէ՛ք. անոր
շտեմարանները բացէ՛ք. զանիկայ
շեղջերու պէս դիզեցէ՛ք. ու նզո-
վածի պէս զանիկայ բնաջինջ ը-
րէք. անոր՝ մնացորդ մը չմնայ։
27 Անոր բոլոր եզուարակները կորսն-
ցուցէ՛ք. թող անոնք սպանդա-
նոցը իջնեն. վա՜յ անոնց, քանզի
անոնց օրը՝ անոնց այցելութեան
28 ժամանակը հասած է։ Բաբելոնի
երկրէն փախչողներուն ու ազա-
տուածներուն ձայնը կու գայ, որ
մեր Տէր Աստուծոյն վրէժխնդրու-
թիւնը՝ անոր տաճարին վրէժխնդ-
րութիւնը Սիօնի մէջ պատմէ։
29 Բաբելոնի վրայ աղեղնաւորները
կանչեցէք. ո՛վ բոլոր աղեղ լա-
րողներ՝ անոր բոլորտիքը անոր դէմ
բանակեցէք. չըլլայ որ մարդ մը
ազատի. անոր՝ իր գործոցը համե-
մատ հատուցում ըրէք. անոր իր
ամէն ըրածին համեմատ ըրէք.
վասն զի անիկայ Տէրոջը դէմ՝ Իս-
րայէլի Սուրբին դէմ հպարտու-
30 թիւն ըրաւ։ Ուստի անոր կըտ-
րիճները իր հրապարակներուն մէջը
պիտի իյնան. և անոր բոլոր պա-
տերազմական մարդիկները այն օրը
բնաջինջ պիտի ըլլան, կ՚ըսէ Տէրը։
31 Ահա ես քեզի դէմ եմ, ո՛վ հը-
պարտ, կ՚ըսէ զօրաց Տէր Եհովան.
քանզի քու օրդ՝ քեզի այցելու-
թիւն ընելու ժամանակս հասած
32 է։ Ու հպարտը գլորելով պիտի իյ-
նայ. ու մէկը պիտի չըլլայ որ զա-
նիկայ վերցընէ. և անոր քաղաք-
ներուն մէջը կրակ պիտի բռնկ-
ցընեմ, որ անոր բոլոր շրջակայ
տեղուանքը պիտի ուտէ։
33 Զօրաց Տէրը այսպէս կ՚ըսէ.
Իսրայէլի որդիքը, ու Յուդայի
որդիքը մէկտեղ զրկանք կրեցին.
ու անոնց բոլոր գերեվարները զա-
նոնք բռնեցին, ու չեն ուզեր զա-
34 նոնք արձակել։ Անոնց Փրկիչը
զօրաւոր է. անոր անունը՝ Զօրաց
Տէր է. անիկայ անշուշտ անոնց
դատին ջատագով պիտի ըլլայ.
որպէս զի երկրին հանգստութիւն
տայ, ու Բաբելոնի բնակիչները
35 խռովեցընէ։ Տէրը կ՚ըսէ որ՝ Քաղ-
դէացւոց վրայ, ու Բաբելոնի բը-
նակիչներուն վրայ, և անոր իշ-
խաններուն ու իմաստուններուն
36 վրայ սուր կու գայ։ Ստախօսնե-
րուն վրայ սուր կու գայ, ու պիտի
խենթենան. անոր կտրիճներուն
վրայ սուր կու գայ, ու պիտի զար-
37 հուրին. Անոր ձիերուն ու կառ-
քերուն վրայ, և անոր մէջը եղող
բոլոր խառնիճաղանճ բազմու-
թեանը վրայ սուր կու գայ, ու
կնիկներու պէս պիտի ըլլան. ա-
նոր գանձերուն վրայ սուր կու գայ,
38 ու պիտի յափշտակուին. Անոր
ջուրերուն վրայ չորութիւն կու
գայ, ու պիտի ցամքին. քանզի ա-
նիկայ դրօշեալներու երկիր է. ու
իրենց կուռքերովը կը յիմարին։
39 Անոր համար հոն՝ վայրենի կա-
տուներ ու բորենիներ պիտի բնա-
կին. ու հոն ջայլամներ պիտի բնա-
կին. և անիկայ մէյմըն ալ մար-
դաբնակ պիտի չըլլայ. ու ազգէ

Սաղ. ՃԼԷ. 8։ Հմր 29։ Յայտ. ԺԸ. 6։
Եսա. ԺԳ. 14։ Գլ. ԾԱ. 9։
Հմր 6։
Գլ. Բ. 15։
Դ Թագ. ԺԷ. 6։
Դ Թագ. ԻԴ. 10, 14։
Եսա. ԿԵ. 10։ Գլ. ԼԴ. 12։ Եզեկ. ԼԴ. 13, 14։
Գլ. ԼԱ. 34։
Եսա. ԱԼ. 9։
Եբ՝ սպառումութեան։
Եբ՝ այցելութեան։
Եզեկ. ԻԳ. 23։
Տես Բ Թագ. ԺԴ. 11։ Դ Թագ. ԺԲ. 25։ Բ Մն. ԼԳ. 23։ Եսա. Ժ. 6։ ԽԴ. 28։ ԽԲ. 14։ Գլ. ԼԴ. 22։
Գլ. ԾԱ. 54։
Եսա. ԺԳ. 6։ Գլ. ԾԱ. 20։
Գլ. ԾԱ. 8, 31, 39, 57։ Դան. Ե. 30, 31։
Եսա. ԺԳ. 5։
Սաղ. ԻԲ. 12։ Եսա. ԼԴ. 7։ Գլ. ԽԱ. 21։
Գլ. ԽԲ. 44։ Հմր 31։

Ն. Ք. Դ.Ճ. 595

Գլ. ԾԱ. 10, 11։
Կամ՝ շատերը
Հմր 14։
Հմր 15։ Գլ. ԾԱ. 56։ Յայտ. ԺԸ. 6։
Եսա. ԽԷ. 10։
Գլ. ԽԹ. 26։ ԾԱ. 4։
Հմր 27։
Գլ. ԻԱ. 14։
Յայտ. ԺԸ. 8։
Եսա. ԽԷ. 4։
Դան. Ե. 30։
Եսա. ԽԷ. 13։
Եսա. ԽԴ. 25։ Գլ. ԽԸ. 30։
Գլ. ԻԵ. 20, 24։ Եզեկ. Լ. 5։
Գլ. ԾԱ. 30։ Նաւ. Գ. 13։
Եսա. ԽԴ. 27։ Գլ. ԾԱ. 32, 36։ Յայտ. ԺԶ. 12։
Հմր 2։ Գլ. ԾԱ. 44, 47, 52։
Եսա. ԺԳ. 21, 22։ ԼԴ. 14։ Գլ. ԾԱ. 37։ Յայտ. ԺԸ. 2։
Եսա. ԺԳ. 20։ Գլ. ԽԹ. 12։

Ն. Ք. գՔ.
595

ա Ծն. ժԹ. 25 ։ Ես. ժգ. 19 ։ Գլ. խԹ. 18 ։ Ծա. 26 ։
բ Հմր 9 ։ Գլ. զ. 22 ։ ԻԵ. 14 ։ Ծա. 27 ։
գ Գլ. զ. 23 ։
դ Ես. ժգ. 18 ։
ե Ես. Ե. 30 ։

ազգ հոն բնակիչ պիտի չըլլայ ։
40 ա Աստուծոյ կործանած Սոդոմին ու
Գոմորին, և անոր շրջակայ քաղաք-
ներուն պէս՝ կ՚ըսէ Տէրը, հոն ոչ
մարդ մը պիտի չնստի, և անոր մէ-
ջը մարդու զաւակ պիտի չբնակի ։
41 բ Ահա հիւսիսէն ժողովուրդ կու
գայ. ու մեծ ազգ. և շատ թագա-
ւորներ՝ երկրիս ծայրերէն պիտի
42 արթըննան ։ գԱնոնք աղեղ ու
նիզակ կը կրեն. դանոնք անգութ
ու անողորմ են. եանոնց ձայնը
ծովու պէս կը գոռայ. և անոնք
ձիերու վրայ կը հեծնեն, ու պա-
տերազմող մարդու պէս քեզի
դէմ կը շարուին՝ ով Բաբելոնի աղ-
43 ջիկ ։ Երբոր Բաբելոնի թագաւո-
րը անոնց լուրը լսեց, անոր ձեռ-
քերը թուլցան. զնեղութիւ-
նը շրջապատեց զանիկայ՝ ծննդ-
դական կնոջ երկանցը պէս ։
44 է Ահա անիկայ առիւծի պէս ա-
մուր բնակարանին վրայ պիտի ելլէ՝
Յորդանանու ջուրերուն յորդե-
լէն. բայց անոր վրայէն շուտով
պիտի փախցընեմ զանոնք. և ո՞վ
է ան ընտրեալը՝ որ անոր վրայ դը-
նեմ. վասն զի ինծի նման ո՞վ կայ.
ու ինծի հետ ո՞վ պիտի վիճարա-
նի. և ո՞վ է ան հովիւը՝ որ իմ
45 առջևս պիտի կենայ ։ Անոր համար
Բաբելոնի վրայով Տէրոջը խոր-
հած խորհուրդը, ու Քաղդէացւոց
երկրին վրայ մտածած մտածմուն-
քը մտիկ ըրէք. հօտին պզտի պըզ-
տիկը անպատճառ պիտի քշէ զա-
նոնք. անշուշտ անոնց բնակարան-
ները անոնց հետ պիտի աւրէ ։
46 Բաբելոնին առնուելուն ձայնէն՝
երկիրը կը շարժի, ու ազգերու մէջ
աղաղակ կը լսուի ։

զ Գլ. խԹ. 24 ։
է Գլ. խԹ. 19, եւ։
ը Յոբ. խա. 10 ։ Գլ. խԹ. 19 ։
թ Ես. ժդ. 24, եւ ։ Գլ. ծա. 11 ։
ժ Յայտ. ժը. 9 ։

## ԳԼ. ԾԱ

1 Աստուծոյ անաչառ դատաստանը Բաբելոնի դէմ ։ 59 Երեմիա այս մարգարէութեանը տոմսը Սարայիային կու տայ որ Եփրատ գետը նետէ, ՚ի նշան Բաբելոնի յաւիտենական կործանմանը ։

1 Տէրը այսպէս կ՚ըսէ. Ահա ես Բա-
բելոնի վրայ, ու իմ թշնամի-
ներուս մէջտեղը բնակողներուն
վրայ ապականիչ հով մը պիտի
2 հանեմ ։ Եւ Բաբելոնի վրայ հո-
սողներ պիտի խրկեմ, ու զանիկայ
պիտի հոսեն, և անոր երկիրը պիտի
պարպեն. վասն զի պատուհասին
օրը՝ անոր վրայ ամէն կողմէն պիտի
3 գան ։ Աղեղնաւորը պիտի լարէ
իր աղեղը՝ աղեղնաւորին դէմ, ու
իր զրահովը հպարտացողին դէմ.
և անոր երիտասարդներուն մի՛ խը-
նայէք. անոր բոլոր զօրքը նզո-
4 վածի պէս բնաջինջ ըրէք ։ Ու

ա Գլ. դ. 11 ։
բ Գլ. ժե. 7 ։
գ Գլ. Ծ. 14 ։
դ Գլ. Ծ. 14 ։
ե Գլ. Ծ. 21 ։

Քաղդէացւոց երկրին մէջ սպան-
նուածներ, և անոր հրապարակ-
ներուն մէջը խոցոտուածներ պիտի
5 իյնան ։ Քանզի Իսրայէլը ու Յու-
դան՝ իր Աստուծմէն զօրաց Տէրոջ-
մէն չմերժուեցաւ, թէպէտև անոնց
երկիրը Իսրայէլի Սրբոյն դէմ յան-
6 ցանքով լեցուեցաւ ։ Բաբելոնի
մէջէն փախէք. ու ամէն մարդ
թող իր անձը ազատէ, որ անոր
անօրէնութեամբը չկործանիք.
քանզի ասիկայ Տէրոջը վրէժ-
խնդրութեան ժամանակն է.
ինքը անոր հատուցում պիտի ը-
7 նէ ։ Բաբելոնը Տէրոջը ձեռքին
մէջ՝ բոլոր երկիրը գինովցընող ոս-
կի գաւաթ եղաւ. անոր գինիէն
ազգերը խմեցին. անոր համար
8 ազգերը խելագարեցան ։ Բաբելոնը
յանկարծ ինկաւ կոտրեցաւ. ա-
նոր վրայ ողբացէ՛ք. անոր վէրքին
համար բալասան առէք, գուցէ
բժշկութիւն գտնէ ։
9 Բաբելոնին դեղ ըրինք. բայց
բժշկութիւն չգտաւ. զանիկայ
թողէ՛ք, ու ամէն մէկերնիս իր
երկիրը երթայ. վասն զի անոր
դատաստանը մինչև երկինքը հա-
սաւ, ու մինչև ամպերը ելաւ ։
10 Տէրը մեր արդարութիւնը երե-
ւան հանեց. եկէք, ու Սիոնի մէջ
մեր Տէր Աստուծոյն գործը պատ-
մենք ։
11 Նետերը փայլեցուցէ՛ք, վահան-
ները առէք. Տէրը Մարաց թա-
գաւորներուն հոգին արթընցուց.
քանզի Բաբելոնի վրայով խորհե-
ցաւ որ զանիկայ բնաջինջ ընէ.
վասն զի ասիկայ Տէրոջը վրէժ-
խնդրութիւնը՝ իր տաճարին վը-
12 րէժխնդրութիւնն է ։ Բաբելոնի
պարիսպներուն դէմ դրօշ վեր-
ցուցէ՛ք. պահապան զօրքը ուժով-
ցուցէ՛ք. դէտեր կարգեցէ՛ք, դա-
րաններ պատրաստեցէ՛ք. քանզի
Տէրը որոշեց, և Բաբելոնի բնակ-
չացը վրայով ըսած խօսքը ՚ի գործ
13 դրաւ ։ Ո՛վ շատ ջուրերու քով
բնակող, ու շատ գանձեր ունե-
ցող, քու վախճանդ, ու քու ա-
14 գահութեանդ չափը եկաւ ։ Զօ-
րաց Տէրը իր անձին վրայ երդում
ըրաւ՝ ըսելով. Անշուշտ քեզ ձմա-
րախի բազմութեանը չափ՝ մարդիկ-
ներով պիտի լեցընեմ, ու քու
վրադ բարձր ձայնով պիտի պո-
ռան ։
15 Երկիրը իր զօրութեամբը շի-
նեց. աշխարհքը իր իմաստու-
թեամբը հաստատեց, ու երկին-
քը իր խորհուրդովը տարածեց ։
16 Երբոր իր ձայնը կու տայ, եր-
կինքի մէջ ջուրերու բազմութիւն

Ն. Ք. գՔ.
595

զ Գլ. խԹ. 26 ։ Ծ. 30, 37 ։
է Գլ. Ծ. 8 ։ Յայտ. ժը. 4 ։
ը Գլ. Ծ. 15, 28 ։
թ Գլ. ԻԵ. 14 ։
ժ Յայտ. ժէ. 4 ։
ի Յայտ. ժդ. 8 ։
լ Գլ. ԻԵ. 16 ։
խ Ես. խա. 9 ։ Յայտ. ժդ. 8 ։ ժը. 2 ։
ծ Գլ. խը. 20 ։ Յայտ. ժը. 9, 11, 19 ։
կ Գլ. խզ. 11 ։
հ Ես. ժգ. 14 ։ Գլ. Ծ. 16 ։
ձ Յայտ. ժը. 5 ։
ղ Սաղ. լէ. 6 ։
ճ Գլ. Ծ. 28 ։
մ Գլ. խզ. 4 ։
յ Ես. ժգ. 17 ։ Հմր 28 ։
ն Գլ. Ծ. 45 ։
շ Գլ. Ծ. 28 ։
ո Նաւ. ր. 1 ։ գ. 14 ։
չ Յայտ. ժէ. 1, 15 ։
պ Գլ. խԹ. 13 ։ Ամով. զ. 8 ։
ջ Նաւ. գ. 15 ։
ռ Գլ. Ծ. 15 ։
ս Ծն. ա. 1, 6 ։ Գլ. ժ. 12, եւ ։
վ Յոբ. Թ. 8 ։ Սաղ. ճդ. 2 ։ Ես. խ. 22 ։
տ Գլ. ժ. 13 ։

Ն. ք. գ. 595

կ'ըլլայ. և երկրի ծայրերէն շո-
գիներ կը հանէ. անձրևի համար
փայլակներ կը շինէ, ու հով կը
17 հանէ իր շտեմարաններէն։ Ա-
մէն մարդ գիտութենէ զրկուած՝
անասուն դարձաւ. ամէն ոս-
կերիչ՝ իր քանդակած կուռքին
պատճառաւը ամօթով եղաւ.
վասն զի իր ձուլածոյ կուռքը սը-
տութիւն է. ու անոնք հոգի չու-
18 նին։ Անոնք ունայնութեան և
խաբէութեան գործքեր են. անոնց
այցելութիւն եղած ատենը՝ անոնք
19 պիտի կորսուին։ Յակոբին բա-
ժինը ասոնց պէս չէ. վասն զի ա-
նիկայ՝ ամէն բանը Ստեղծողն է,
ու Իսրայէլը անոր ժառանգութեա-
նը վիճակն է. և անոր անունը՝ Ե-
հովայ Սաբաւովթ է։
20 Դուն իմ կռանս՝ պատերազմա-
կան գործիքս ես. և քեզմով ազգեր
պիտի կոտրեմ, ու քեզմով թա-
գաւորութիւններ պիտի աւրեմ,
21 Եւ ձին ու անոր հեծեալը քեզմով
պիտի կոտրեմ, ու կառքը և անոր
վրայ հեծնողը քեզմով պիտի կոտ-
22 րեմ. Ու քեզմով մարդը ու կնիկը
պիտի կոտրեմ, և քեզմով ծերը
ու երիտասարդը պիտի կոտրեմ,
ու կտրիճը և կոյսը քեզմով պիտի
23 կոտրեմ, Ու հովիւը և անոր հօտը
քեզմով պիտի կոտրեմ, երկրա-
գործը ու անոր եզներուն զոյգը
քեզմով պիտի կոտրեմ, և կուսա-
կալները ու նախարարները քեզմով
24 պիտի կոտրեմ։ Եւ Բաբելոնին,
ու Քաղդէացւոց երկրին բոլոր բը-
նակիչներուն՝ պիտի հատուցանեմ
իրենց բոլոր չարութիւնը, որ ձեր
աչքերուն առջևը Սիոնին ըրին՝
25 կ'ըսէ Տէրը։ Ով բոլոր երկիրը
աւրող ապականիչ լեռ՝ ահա ես
քեզի դէմ եմ՝ կ'ըսէ Տէրը, և իմ
ձեռքս քու վրադ պիտի երկընցը-
նեմ, ու քեզ վէմերէն վար պիտի
գլտորցընեմ, և քեզ այրած լեռ
26 պիտի ընեմ. Ու քեզմէ անկեան
քար և հիման քար պիտի չառ-
նեն. հապա յաւիտենական ա-
ւերակ պիտի ըլլաս՝ կ'ըսէ Տէրը։
27 Երկրին մէջ դրօշ վերցուցէք.
ազգերուն մէջ փող հնչեցուցէք.
անոր դէմ ազգեր պատրաստեցէք.
անոր վրայ Արարատի, Միննիի,
ու Ասքանազի թագաւորութիւն-
ները կանչեցէք. անոր վրայ զօրա-
պետներ դրէք, մազոտ մարախնե-
28 րու պէս ձիեր հանեցէք. Անոր վը-
րայ ազգեր՝ Մարաց թագաւորնե-
րը, անոնց կուսակալները, ու բո-
լոր նախարարները, և անոնց իշխա-
նութեանը բոլոր երկիրը պատրաս-
29 տեցէք։ Ու երկիրը պիտի դողայ
ու նեղութիւն կրէ. վասն զի Բա-
բելոնի վրայով Տէրոջը ունեցած
խորհուրդները պիտի հաստատուին,
Բաբելոնի երկիրը անբնակ ամա-
30 յութիւն ընելու համար։ Բաբե-
լոնի զօրաւոր մարդիկները պատե-
րազմելէն դադարեցան. բերդերու
մէջ բնակեցան. ուժերնին կտրե-
ցաւ. կնիկներու պէս եղան. անոր
բնակարանները այրեցին. անոր
31 նիգերը կոտրեցան։ Սուրհանդա-
կը սուրհանդակի հանդիպելու, ու
լրաբերը լրաբերի հանդիպելու պի-
տի վազէ, Բաբելոնի թագաւորին
պատմելու համար՝ թէ անոր քա-
32 ղաքը մէկ ծայրէն առնուեցաւ, Եւ
թէ անցքերը բռնուեցան, ու ե-
ղէգները կրակով այրեցան, և պա-
տերազմական մարդիկները զարհու-
33 րեցան։ Քանզի զօրաց Տէրը՝ Իս-
րայէլին Աստուածը այսպէս կ'ըսէ.
Բաբելոնի աղջիկը կալի պէս է.
անոր ծեծուելու ատենն է. քիչ
ատենէն ետքը՝ անոր հունձքին
ժամանակը պիտի գայ։
34 Բաբելոնի Նաբուգոդոնոսոր թա-
գաւորը զիս կերաւ. զիս բնաջինջ
ըրաւ. զիս պարապ աման պէս
ըրաւ. վիշապի պէս զիս կլլեց.
իմ փափկութիւններէս իր փորը
կշտացուց. զիս դուրս նետեց։
35 Սիոնի բնակիչը պիտի ըսէ. Ինծի
ու իմ մարմնոյս եղած զրկանքը՝
Բաբելոնին վրայ ըլլայ. ու Երու-
սաղէմը պիտի ըսէ. Իմ արիւնս
Քաղդէացւոց երկրին բնակչացը
36 վրայ ըլլայ։ Անոր համար Տէրը
այսպէս կ'ըսէ. ահա ես քու դա-
տիդ պաշտպան պիտի կայնիմ, ու
քեզի համար վրէժխնդիր պիտի ըլ-
լամ, և անոր ծովը ցամաք պիտի
ընեմ, ու անոր աղբիւրը պիտի
37 չորցընեմ։ Եւ Բաբելոնը աւե-
րակ դէզեր, ճագարներու բնա-
կարան, զարմանքի և սուլելու
առարկայ պիտի ըլլայ, ու հոն մարդ
38 պիտի չբնակի։ Անոնք առիւծ ա-
ռիւծներու պէս մէկտեղ պիտի
մռնչեն, և կորիւններու պէս պիտի
39 կանչուըռտեն։ Երբոր անոնք տը-
նիկեն տաքնան՝ անոնց կոչունք պի-
տի ընեմ. ու զանոնք պիտի գի-
նովցընեմ, որպէս զի զուարթա-
նան. և յաւիտենական քունով
քնանան, ու չարթըննան, կ'ըսէ
40 Տէրը։ Զանոնք ապանդանոցը պի-
տի իջեցընեմ գառնուկներու պէս՝
խոյերու պէս՝ նոխազներու
հետ։
41 Ինչպէս առնուեցաւ Սիսակը,
ու բոլոր երկրին պարծանքը բըռ-
նուեցաւ. Բաբելոնը ինչպէս ա-
42 ւերակ եղաւ ազգերուն մէջ։ Ծո-

Ն. ք. գ. 595
Սաղ. ծլե. 7.
Գլ. ժ. 14.
Գլ. ժ. 2.
Գլ. ժ. 15.
Գլ. ժ. 16.
Ես. ժ. 5. 15. Գլ. ծ. 23.
Միք. լզ. 17.
Գլ. ծ. 15. 29.
Բ Ես. ժգ. 2. Զաք. դ. 7.
Յայտ. ը. 8.
Գլ. ծ. 40.
Ես. ժգ. 2.
Գլ. իե. 14.
Գլ. ծ. 41.
Հմր 11.

Ն. ք. գ. 595
Գլ. ծ. 13. 39. 40. Հմր 43.
Ես. ժթ. 16. Գլ. խը. 41. ծ. 37.
Ովս. բ. 9. Ամով. ա. 5. Նաւ. գ. 13.
Գլ. ծ. 24.
Գլ. ծ. 38.
Ես. իա. 10. Ամով. ա. 3. Միք. դ. 13.
Ես. խա. 15. Ամբ. գ. 12.
Ես. ժէ. 5. 6. Ովս. զ. 11. Յովել. գ. 13. Յայտ. ժդ. 15. 18.
Գլ. ծ. 17.
Գլ. ծ. 34.
Գլ. ծ. 38.
Ես. ժգ. 22. Գլ. ծ. 39. Յայտ. ժը. 2.
Գլ. իե. 9. 18.
Հմր 57.
Գլ. իե. 26.
Ես. ժգ. 19. Գլ. խթ. 25. Դան. դ. 30.
Տիմ. Ես. ը. 7. 8.

Ն. Ք. ՉԲ. 595

վը Բաբելոնին վրայ ելաւ, անոր ա-
լիքներուն շատութենէն ծածկուե-
43 ցաւ ։ Անոր քաղաքները՝ աւե-
րակ, անջուր երկիր, ու անապատ
եղաւ, անանկ երկիր մը եղաւ,
որ հոն մարդ մը չբնակիր, ու անկէ
44 մարդու զաւակ չանցնիր ։ Ես Բա-
բիլոնի մէջ Բելին այցելութիւն
պիտի ընեմ, ու անոր բերնէն ա-
նոր կլլածը պիտի հանեմ. ու մէյ-
մըն ալ ազգերը անոր պիտի չդի-
մեն. Բաբիլոնի պարիսպն ալ պի-
45 տի փլչի ։ Անոր մէջէն ելէք, ով
իմ ժողովուրդս. և ամէն մարդ
թող իր անձը ազատէ Տէրոջը սաս-
46 տիկ բարկութենէն ։ Ու չըլլայ որ
Երկրին մէջ լսուելու լուրէն ձեր
սիրտը թուլնայ ու վախնաք, երբ-
որ մէկ տարւոյն մէջ մէկ լուր մը,
և հետևեալ տարւոյն մէջ մէկ ու-
րիշ լուր մը գայ, ու երկրին մէջ
բռնութիւն ըլլայ, իշխան իշխա-
նի դէմ ելլէ ։
47 Անոր համար ահա՛ օրեր կու գան՝
որ Բաբիլոնի կուռքերուն այցե-
լութիւն պիտի ընեմ. ու անոր
բոլոր երկիրը ամօթով պիտի ըլլայ.
և անոր բոլոր սպաննուածները ա-
48 նոր մէջը պիտի իյնան ։ Ու երկ-
կինքը ու երկիրը և բոլոր անոնց
մէջը եղածը՝ Բաբիլոնին վրայ պիտի
ցնծան. վասն զի աւրողները հիւ-
սիսէն պիտի գան անոր՝ կ՚ըսէ Տէ-
49 րը ։ Ինչպէս որ Բաբիլոնը Իսրա-
յէլին սպաննուածները վար ձգեց,
այնպէս ալ Բաբիլոնի մէջ բոլոր
երկրին սպաննուածները պիտի իյ-
50 նան ։ Ո՛վ սուրէ ազատուածներ՝
գացէ՛ք, մի՛ կայնիք. հեռուէն Տէ-
րը յիշեցէ՛ք. ու Երուսաղէմը ձեր
մի՛տքը թող գայ ։
51 Նախատինք լսելնուս համար՝ ա-
մըչցանք. ամօթը մեր երեսը ծած-
կեց. քանզի Տէրոջը տանը սրբա-
րաններուն մէջ՝ օտարազգիներ մը-
52 տան ։ Անոր համար ահա՛ օրեր կու
գան՝ կ՚ըսէ Տէրը, որ անոր կուռ-
քերուն այցելութիւն պիտի ընեմ,
և անոր բոլոր երկրին մէջ վիրաւոր-
53 ներ պիտի հեծեն. Թէև Բաբի-
լոնը մինչև երկինքը ելլէ, ու իր
զօրութիւնը բարձրութեան մէջ
հաստատէ", իմ կողմանէս աւրող-
ներ պիտի գան անոր՝ կ՚ըսէ Տէրը ։
54 Բաբիլոնէն աղաղակի ձայն, ու
Քաղդէացւոց երկրէն մեծ կոտորա-
55 ծի ձայն կու գայ ։ Քանզի Տէրը
Բաբիլոնը կ՚աւրէ, ու անոր մէջէն
մեծ ձայնը կը խափանէ. որով-
հետև անոնց ալիքները շատ ջու-
րերու պէս կը գոչեն. ու անոնց
56 ձայնը աղմկալից կ՚ելլէ ։ Քան-
զի անոր վրայ՝ Բաբիլոնին վրայ՝

աւրող մը եկաւ. ու անոր զօրա-
ւորները առնուեցան, անոնց ա-
ղեղները կոտրեցան. քանզի Տէրը՝
հատուցիչ Աստուած է. անշուշտ
57 հատուցում պիտի ընէ ։ Եւ անոր
իշխանները ու իմաստունները,
կուսակալները ու նախարարները,
և զօրաւոր մարդիկները պիտի գի-
նովցընեմ. ու անոնք յաւիտենա-
կան քունով պիտի քնանան, ու
պիտի չարթըննան՝ կ՚ըսէ Թա-
գաւորը՝ որուն անունը Զօրաց Տէր
58 է ։ Զօրաց Տէրը այսպէս կ՚ըսէ.
Բաբիլոնին լայն պարիսպները բո-
լորովին պիտի փլչին, ու անոր
բարձր դռները կրակով պիտի այ-
րին. և ժողովուրդները պարապ
տեղը, ու ազգերը՝ կրակի համար
պիտի աշխատին ու յոգնին ։
59 Աս խօսքն է որ Երեմիա մարգարէն
պատուիրեց Մաասիայի որդւոյն
Ներիայի որդւոյն Սարայիային,
երբոր անիկայ Յուդայի Սեդեկիա
թագաւորին կողմանէ՝ անոր թա-
գաւորութեանը չորրորդ տարին՝
Բաբիլոն գնաց. ու Սարայիան
60 գլխաւոր սենեկապան էր ։ Վասն
զի Երեմիա՝ Բաբիլոնին վրայ գալու
ամէն չարիքները մէկ գրքի մը մէջ
գրեց, այսինքն աս բոլոր խօսքերը
որ Բաբիլոնի դէմ գրուած են ։
61 Ու Երեմիա՝ Սարայիային ըսաւ.
Երբոր Բաբիլոն երթաս, Նայէ որ
62 կարդաս" աս բոլոր խօսքերը, Ու
ըսես. Ո՛վ Տէր՝ դուն աս տեղւոյս
համար ըսիր որ զանիկայ պիտի աւ-
րես, ու մարդէ մինչև անասուն
անոր մէջ բնակիչ պիտի չըլլայ.
հապա յաւիտենական ամայութիւն
63 պիտի ըլլայ ։ Ու երբոր աս գիրքը
կարդալը լմնցընես, անոր վրայ
քար մը կապէս, ու զանիկայ Եփ-
64 րատի մէջ նետես, Ու ըսես. Այս-
պէս պիտի ընկղմի Բաբիլոնը, ու
մէյմըն ալ պիտի չկանգնի, իմ
անոր վրայ բերելու չարիքներուս
պատճառաւը. ու անոնք պիտի
յոգնին ։
Երեմիային խօսքերը մինչև հոս են ։

## ԳԼ. ԾԲ

1 Սեդեկիային ապստամբութիւնը ։ 4 Երուսաղէմ կը պաշարուի ու կ՚առնուի ։ 8 Սեդեկիային տղաքը կը մեռցուին, և իր աչքերը կը փորուին ։ 12 Նաբուզարդան՝ քաղաքը կ՚այրէ ու աւարը կ՚առնէ. 24 գերիները հետը կ՚առնէ կը տանի ։ 32 Եւմարոդաք կը բարձրացընէ Յովաքիմը ։

1 Սեդեկիա քսանումէկ տարեկան
էր՝ երբոր թագաւոր եղաւ. ու
Երուսաղէմի մէջ տասնումէկ տարի
թագաւորութիւն ըրաւ. և անոր
մօրը անունը Ամիտաղ էր, Լեբ-
2 նացի Երեմիային աղջիկն էր ։ Եւ

Ն. Ք. ՉԲ. 595

Գլ. Ծ. 39. 40։ Հմր 29։
Եզեկ. Խզ. 1։ Գլ. Ծ. 2։
Հմր 53։
Հմր 6։ Գլ. Ծ. 8։ Յայտ. ԺԸ. 4։
Դ Թագ. ԺԹ. 7։
Գլ. Ծ. 2։ Հմր 52։
Եսայ. Խդ. 23։ ԽԹ. 13։ Յայտ. ԺԸ. 20։
Գլ. Ծ. 3. 41։
Գլ. Խդ. 28։
Սաղ. Խդ. 15. 16։ ՃԹ. 4։
Հմր 47։
Գլ. ԽԹ. 16։ Ամով. Թ. 2։ Աբդ. 4։
Եբր. զօրութեանը բարձրութիւնը ամրացընէ,
Գլ. Ծ. 22։

Ն. Ք. ՉԲ. 595

Սաղ. ՂԴ. 1։ Գլ. Ծ. 29։ Հմր 24։
Հմր 39։
Գլ. Խզ. 18։ Խր. 15։
Հմր 44։
Ամբ. Բ. 13։
Կամ հետը՝
Կամ տես և կարդա՛
Գլ. Ծ. 3. 39։ Հմր 29։
Տես Յայտ. ԺԸ. 21։
Հմր 58։

599

Դ Թագ. ԻԴ. 18։

Ն. ք. գճ. 595

անիկայ Յովակիմին բոլոր ըրածին
պէս՝ Տէրոջը առջեւը չարութիւն
3 ըրաւ ։ Քանզի Տէրոջը բարկու-
թիւնը Երուսաղէմին ու Յուդային
վրայ էր, մինչեւ որ զանոնք իր երե-
սէն ձգէ. անոր համար Սեդեկիա՝
Բաբելոնի թագաւորէն ապստամ-
բեցաւ ։

590

բ Դ Թագ. իե. 1—27։ Գւ. լԹ. 1։ գ Զաք. ը. 19։

4 Ու եղաւ որ՝ գ անոր թագաւորու-
թեանը իններորդ տարին գ տասն-
երորդ ամիսը՝ ամսուն տասներորդ
օրը՝ Բաբելոնի Նաբուգոդոնոսոր
թագաւորը իր բոլոր զօրքովը Ե-
րուսաղէմի վրայ եկաւ, ու անոր
դիմացը բանակեցաւ. եւ անոր դէմ
շուրջանակի պատնէշներ շինեցին.

588

5 Ու մինչեւ Սեդեկիա թագաւորին
մետասաներորդ տարին՝ քաղաքը
6 պաշարման մէջ էր ։ Եւ չորրորդ
ամսուն մէջ՝ ամսուն իններին՝ քաղա-
քին մէջը սաստիկ սով կար, ու
երկրին ժողովուրդը հաց չունէր.
7 Եւ քաղաքին պարիսպը ճեղքուե-
ցաւ, ու բոլոր պատերազմողները
փախան, եւ գիշերով՝ թագաւորի
պարտէզին քովը եղող երկու պա-
րըսպին մէջի դրանը ճամբայով քա-
ղաքէն ելան ։ ու Քաղդէացիք քա-
ղաքին բոլորտիքը կեցեր էին. ու
անոնք դաշտի ճամբայէն գացին ։
8 Եւ Քաղդէացւոց զօրքը թագաւո-
րին ետեւէն ինկան, ու Երիքովի
դաշտերուն մէջը Սեդեկիային հա-
սան. եւ անոր բոլոր զօրքը անոր

տ Գւ. լԹ. 4։

9 քովէն ցրուեցաւ. տ Ու թագաւորը
բռնեցին, ու զանիկայ Բաբելոնի
թագաւորին՝ Ռեբղա տարին՝ Եմա-
թի երկրին մէջ. եւ անոր դատաս-

ւ Եզեկ. ժբ. 13։

10 տանը տեսաւ ։ ւ Ու Բաբելոնի թա-
գաւորը՝ Սեդեկիային տղաքները ա-
նոր աչքերուն առջեւը մորթեց.
Յուդայի բոլոր իշխաններն ալ
11 Ռեբղայի մէջ մորթեց. Եւ Սե-
դեկիային աչքերը կուրացուց, ու
զանիկայ շղթաներով կապեց, եւ
Բաբելոնի թագաւորը զանիկայ
Բաբելոն տարաւ, ու զանիկայ
մինչեւ իր մահուան օրը բանտի մէջ
պահեց ։

ղ Տն. 29։
ե Զաք. է. 5։ ը. 19։
ը Գւ. լԹ. 9։

12 Եւ Բաբելոնի թագաւոր ՚Նա-
բուգոդոնոսոր թագաւորին տասն-
ուիններորդ տարին ե հինգերորդ ա-
միսը՝ ամսուն տասնին՝ Բաբելոնի
թագաւորին առջեւը կայնող ը Նա-
բուզարդան դահճապետը Երուսա-
13 ղէմ մէջ մտաւ. Ու Տէրոջը տու-
նը, եւ թագաւորին տունը այրեց.
ու Երուսաղէմին բոլոր տուները,
ու ամէն մեծ տուները կրակով
14 այրեց ։ Եւ դահճապետին հետը
եղող Քաղդէացւոց բոլոր զօրքերը՝
Երուսաղէմին բոլոր շրջակայ պա-
15 րիսպները փլցուցին ։ Ու ժողո-
վուրդին աղքատներէն, եւ քաղաքին
մէջը մնացած ժողովուրդին մնացոր-
դը, ու Բաբելոնի թագաւորին իյ-
նող փախստականները, ու մնացած
բազմութիւնը՝ ր Նաբուզարդան
16 դահճապետը գերի տարաւ ։ Եւ
Նաբուզարդան դահճապետը երկ-
րին աղքատներէն թողուց՝ այգե-
գործներ ու երկրագործներ ըլլալու
համար ։

Ն. ք. գճ. 588
ր Գւ. լԹ. 9, 9։

17 ծ Եւ Քաղդէացիք Տէրոջը տանը
մէջ եղող կ պղնձէ սիւները ու մե-
քենովթները, ու Տէրոջը տանը
մէջ եղող պղնձէ ծովը կտոր կտոր
ըրին, ու անոնց բոլոր պղինձը Բա-
18 բիլոն տարին ։ Եւ Լ թաղարները,
ու թիակները, եւ բազմակալները,
ու կոնքերը, եւ խնկամանները, ու
պաշտօնի համար գործածուած բո-
19 լոր պղնձէ անօթները առին ։ Եւ
գաւաթները, ու բուրվառները, եւ
կոնքերը, ու թաղարները, ու աշ-
տանակները, եւ խնկամանները ու
բաժակները առաւ դահճապետը,
ինչ որ ոսկիէ էր՝ զուտ ոսկի, ու
ինչ որ արծաթէ էր՝ զուտ ար-
20 ծաթ. Նաեւ Սողոմոն թագաւորին՝
Տէրոջը տանը համար շինած երկու
սիւները, մէկ ծովը, ու * մեքե-
նովթներուն տակը եղած տասնու-
երկու պղնձէ եզները". Խ բոլոր աս
գործիքներուն պղինձը կշիռքի չէր
21 գար ։ Եւ ծ սիւներուն մէկուն բարձ-
րութիւնը տասնութը կանգուն
էր, ու անոր շրջապատը տասուեր-
կու կանգուն էր, եւ անոր թանձ-
րութիւնը չորս մատնաչափ էր, ու
22 մէջը պարապ էր ։ Եւ անոր վրայ
պղնձէ խոյակ կար. ու մէկ խոյա-
կին բարձրութիւնը հինգ կանգուն
էր, եւ խոյակին վրայ շուրջանակի
ցանցակերպ զարդ ու նուռեր կա-
յին. ամէնն ալ պղնձէ էին. մէ-
կալ սիւնն ալ նուռերով այնպէս
23 էր ։ Ու նուռերը մէկ կողմէն իննս-
ունվեց էին. ու կ ցանցակերպ
զարդին վրայ շուրջանակի բոլոր
նուռերը հարիւր էին ։

ծ Գւ. իէ. 19, 20։
կ Տն. գ Թագ. է. 15. 23. 27. 50։
Լ Ել. իէ. 3։ դ Թագ. իե. 14. 15. 16։
* Կամ՝ «անոր տակը եղած տասնուերկու եզներ — մեքենովթները».
Խ գ Թագ. է. 47։
ծ գ Թագ. է. 15։ դ Թագ. իե. 17։ բ Մն. գ. 15։
կ Տն. գ Թագ. է. 20։

24 Եւ ՚ դահճապետը առաջին քա-
հանան Սարայիան՝ յու երկրորդ
քահանան Սոփոնիան՝ ու դրան ի-
25 րեք պահապանները առաւ. Եւ
քաղաքէն մէկ ներքինի մը առաւ,
որ անիկայ պատերազմող մարդիկ-
ներուն զօրագլուխն էր. ու քա-
ղաքին մէջը գտնուած՝ թագաւո-
րին † առջեւը կայնողներէն" եօթը
մարդ, ու երկրին ժողովուրդը գի-
նուորութեան գրող՝ զօրքին մեծ
դպրապետը, եւ քաղաքին մէջը գտ-
նուած երկրին ժողովուրդէն վաթ-
26 սուն մարդ առաւ ։ Ու Նաբու-
զարդան դահճապետը զանոնք ա-

՚ դ Թագ. իե. 18։
յ Գւ. իա. 1։ իԹ. 25։
† Եբր. «երեսը տեսնողներէն»

Ն. Ք. ԶՔ. 588

ռաւ, ու Բաբելոնի թագաւորին՝
27 Ռեբղա տարաւ ։ Եւ Բաբելոնի
թագաւորը զանոնք զարկաւ, ու
Եմաթի երկրին Ռեբղային մէջ
զանոնք մեռցուց ։ Այսպէս Յու-
դան իր երկրէն դերի տարուեցաւ ։
28 Նաբուգոդոնոսորին դերի քշած
ժողովուրդը ասիկայ է. Եօթնե-
րորդ տարին՝ ³իրեք հազար քսան-
29 ուիրեք Հրէայ. ʲՆաբուգոդոնո-
սորին տասնուութերորդ տարին՝
Երուսաղէմէն ութը հարիւր եր-
30 սունուերկու հոգի. Նաբուգոդո-
նոսորին քսանուիրեքերորդ տարին՝
Նաբուզարդան դահճապետը՝ Հրէ-
աներէն եօթը հարիւր քառասնու-
հինգ հոգի գերի քշեց. ամէնը չորս
հազար վեց հարիւր հոգի էր ։
31 ʲՈւ եղաւ որ Յուդայի Յովաքին
թագաւորին գերութեանը երսուն-
ուեօթներորդ տարին երկոտասա-
ներորդ ամիսը՝ ամսուն քսանու-
հինգերորդ օրը, Բաբելոնի Եւիլմա-
րոդաք թագաւորը՝ իր թագաւոր
եղած տարին, ˢՅուդայի Յովաքին
թագաւորին գլուխը բարձրացուց,
32 ու զանիկայ բանտէն հանեց. Եւ
անոր հետ քաղցրութեամբ խօսե-
ցաւ, ու անոր աթոռը՝ Բաբելոնի
մէջ իր հետը եղող թագաւորնե-
33 րուն աթոռէն վեր դրաւ. Եւ ա-
նոր բանտի լաթերը փոխեց. Ու
անիկայ իր կենացը բոլոր օրերուն
մէջ՝ միշտ անոր առջևը հաց կ'ու-
34 տէր. Եւ անոր ռոճիկը մշտատև
ռոճիկ ըլլալով, անոր կենացը բո-
լոր օրերուն մէջ՝ մինչև անոր մա-
հուան օրը՝ Բաբելոնի թագաւո-
րին կողմէն օրէ օր անոր կը
տրուէր ։

600
ʰ Տես Դ Թագ. ԻԴ. 12.
590
ⁱ Տես Դ Թագ. ԻԴ. 14.
585
ʲ Տես Հմր 12. Գլ. ԼԹ. 9.
ʲ Դ Թագ. ԻԵ. 27. 28. 29. 30.
562

Ն. Ք. ԶՔ. 562

ˢ Տես Ծն. Խ. 13. 20.
ᵗ Բ Թագ. Թ. 13.

# ՈՂԲՔ ԵՐԵՄԻԱՅ

Ն. Ք. ԶՔ. ԻՐՐ 588

## ԳԼՈՒԽ Ա

1 Երուսաղեմի թշուառ վիճակը իր մեղքին պատճառովը ։ 12 Անիկայ իր տառապանացը համար կը գանգատի. 18 ու կը խոստովանի թէ Աստուծոյ դատաստանը արդար է ։

1 Ի՜նչպէս առանձին կը նստի բազ-
մամարդ քաղաքը. ազգերուն
մէջ մեծ եղողը ᵃորբևարիի պէս ե-
ղաւ. գաւառներուն մէջ ᵇիշխա-
նուհի եղողը հարկատու եղաւ ։
2 ᶜԳիշերը անդադար ᵈկու լայ,
ու իր արցունքները իր այտերուն
վրայ են. անոր բոլոր ᵉսիրելինե-
րէն՝ անոր մխիթարութիւն տուող
չկայ. անոր բոլոր բարեկամները ա-
նոր նենգութիւն ըրին անոր
թշնամի եղան ։
3 ᶠՅուդան տառապանաց և խիստ
ծառայութեան համար դերի քը-
շուեցաւ. Հեթանոսներուն մէ-
ջը կը բնակի. հանգստութիւն
չգտներ. անոր բոլոր հալածիչնե-
րը՝ անոր նեղութեանցը մէջ՝ անոր
վրայ հասան ։
4 Սիոնին ճամբաները սուգ կը
բռնեն, հանդիսաւոր տօներուն ե-
կողներ չըլլալուն համար. անոր
բոլոր դռները ամայացած են. ա-
նոր քահանաները կը հեծեն. անոր
կոյսերը կը տրտմին, ու ինքը դառ-
նութեան մէջ է ։
5 Անոր նեղիչները ᵍիշխան եղան.
անոր թշնամիները յաջողութիւն
գտան. վասն զի Տէրը զանիկայ
տրտմութեան մատնեց՝ ʰանոր շատ
յանցանքներուն համար. անոր
պզտիկ տղաքը թշնամիին առջևէն
գերի դացին ։
6 Եւ Սիոնի աղջիկէն՝ իր բոլոր
վայելչութիւնը գնաց. անոր իշ-
խանները ճարակ չգտնող եղջերու-
ներու պէս եղան, ու հալածողին
առջևէն առանց ուժի կ'երթան ։
7 Երուսաղէմ իր տառապանաց ու
թշուառութեան օրերը՝ իր առա-
ջուց ունեցած բոլոր ⁱցանկալի բա-
ները յիշեց. երբոր իր ժողովուրդը
թշնամիին ձեռքը ինկաւ, ու ի-
րեն օգնութիւն ընող չեղաւ. թըշ-
նամիները զանիկայ տեսան, ու ա-
նոր կործանմանը վրայ խնդացին ։
8 Երուսաղէմ ծանր ʲմեղք գոր-
ծեց. անոր համար *պիղծ սեպուե-
ցաւ*. զանիկայ ամէն պատուող-
ները՝ զանիկայ անարգեցին. վասն
զի ᵏանոր մերկութիւնը տեսան.
անիկայ ալ հառաչեց, ու ետ դար-
ձաւ ։
9 Անոր պղծութիւնը իր քղանցք-
ներուն վրայ է. անիկայ իր ˡվախ-
ճանը չյիշեց. ու զարմանալի կեր-
պով մը նուաստացաւ. անիկայ
ᵐմխիթարիչ չունի ։ Ո՛վ Տէր՝ իմ
տառապանքիս նայէ. վասն զի
թշնամին հպարտացաւ ։
10 Անոր բոլոր ⁿցանկալի բաներուն՝

ᵃ Ես. ԽԷ. 7. 8.
ᵇ Եզր. Դ. 20.
ᶜ Յոբ. Է. 3. Սաղ. Զ. 6.
ᵈ Երեմ. ԺԴ. 17.
ᵉ Հմր 19.
ᵉ Հմր 9. 16. 17. 21.
ᶠ Երեմ. ԾԲ. 27.
ᶠ Բ Օր. ԻԸ. 64. 65. Գլ. Բ. 9.
ᵍ Բ Օր. ԻԸ. 43. 44.

ʰ Երեմ. Լ. 14. 15. Դան. Թ. 7. 16.
ⁱ Հմր 10.
ʲ Գ Թագ. Ը. 46.
* Կամ՝ Թափառական եղաւ.
ᵏ Երեմ. ԺԳ. 22. 26. Եզեկ. ԺԶ. 37. ԻԳ. 29. Ովս. Բ. 10.
ˡ Բ Օր. ԼԲ. 29. Ես. ԽԷ. 7.
ᵐ Հմր 2. 17. 21.
ⁿ Հմր 7.

Ն. Ք. Գ Ք.
ԻԲԲ 588

յ Երեմ. ծա. 51 ։
ջ բ Օր. Իգ. 3 ։ Նեեմ. Ժգ. 1 ։
է Երեմ. Լը. 9 ։ Ծր. 6 ։ Գլ. բ. 12 ։ գ. 4 ։
ſ Դան. Թ. 12 ։
յ Եզեկ. Ժբ. 13 ։ ԺԷ. 20 ։
ն բ Օր. Իը. 48 ։
* Եբր. Հիւսուեցան,
† Եբր. ոտք ելլել ։
Լ Ես. Կգ. 3 ։ Յայտ. Ժդ. 19 ։ 20 ։ ԺԹ. 15 ։
ս Երեմ. Ժգ. 17 ։ Ժդ. 17 ։ Գլ. բ. 18 ։
‡ Եբր. ջուր
ւ Հմր 2, 9 ։
դ Երեմ. դ. 31 ։
ջ Հմր 2, 9 ։
– Նեեմ. Թ. 33 ։ Դան. Թ. 7, 14 ։
ա Թագ. Ժբ. 14, 15 ։
Լ Հմր 2 ։ Երեմ. Լ. 14 ։
ր Հմր 11 ։
ր Յոբ. Լ. 27 ։ Ես. Ժզ. 11 ։ Երեմ. դ. 19 ։ Խը. 36 ։ Գլ. բ. 11 ։ Ովս. Ժա. 8 ։

Թշնամին ձեռք երկընցուց ․ քանզի
յ հեթանոսները տեսաւ , որ իր սըր-
բարանին մէջը մտան , որոնց հա-
մար դուն պատուիրեր էիր՝ որ ա-
նոնք քու ժողովքիդ մէջը չմտնեն ։
11 Անոր բոլոր ժողովուրդը՝ է հաց
փնտռելէն հառաչեց ․ իրենց հոգին
ուժովցընելու համար՝ իրենց ցան-
կալի բաները՝ կերակուրի փոխարէն
տուին ․ տե՛ս ո՛վ Տէր , ու նայէ ․
վասն զի անարգուեցայ ։
12 Արդեօք հոգ չէ՞ք ըներ , ո՛վ
բոլոր ճամբայէ անցնողներ ․ նայե-
ցէ՛ք ու տեսէ՛ք , թէ արդեօք ſ իմ
ցաւիս պէս ցաւ կա՞յ , որ իմ վրաս
եկաւ ․ վասն զի Տէրը իս նեղեց իր
սաստիկ բարկութեան օրը ․
13 Բարձրէն իմ ոսկորներուս կը-
րակ խրկեց , որ անոնց տիրեց ․
ոտքերուս յ ցանց տարածեց , ու զիս
ետ դարձուց ․ զիս ամայի ըրաւ ,
ու բոլոր օրը վշտով մարած թողուց ։
14 Իմ յանցանքներուս ն լուծը՝ ա-
նոր ձեռքովը կապուեցաւ ․ անոնք
* միացան , ու իմ պարանոցիս վրայ
ելան ․ իմ ոյժս կոտրեց ․ Տէրը զիս
անանկ ձեռքերու մատնեց , որ ա-
նոնցմէ չեմ կրնար † ազատիլ ։
15 Տէրը իմ մէջս՝ իմ բոլոր զօրա-
ւորներս անարգեց ․ իմ երիտա-
սարդներս կոտրելու համար՝ իմ վը-
րաս ժողովք կանչեց ․ Տէրը՝ Յու-
դայի կոյս աղջիկը Լ հնձանի մէջ
կոխեց ։
16 Ասոնց համար կու լամ ․ ս աչքերս՝
աչքերս ‡ արցունք կ՚իջեցընեն ․ վասն
զի ինծմէ հեռացաւ ւ մխիթարիչը ,
որ իմ հոգիս պիտի նորոգէր ․ իմ
տղաքս նուաղեցան ․ վասն զի թըշ-
նամին զօրացաւ ։
17 դ Սիոնը իր ձեռքերը տարածեց ․
ջ անոր մխիթարութիւն տուող չը-
կայ ․ Տէրը՝ Յակոբին համար հը-
րամայեց , որ անոր թշնամիները
զանիկայ շրջապատեն ․ Երուսաղէ-
մը անոնց մէջ դաշտանաւոր կնկան
պէս եղաւ ։
18 – Տէրը արդար է ․ ա վասն զի ա-
նոր հրամանին ապստամբ եղայ ․
հիմա ո՛վ բոլոր ժողովուրդներ՝ մը-
տիկ ըրէք , ու իմ ցաւս տեսէ՛ք ․
իմ կոյսերս ու երիտասարդներս
գերութեան գացին ։
19 Իմ սիրականներս կանչեցի ․ Լ ա-
նոնք զիս խաբեցին ․ իմ քահա-
նաներս ու ծերերս քաղաքին մէջ
հոգինին աւանդեցին , երբոր իրենց
համար կերակուր կը փնտռէին , ր ի-
րենց հոգին ուժովցընելու համար ։
20 Ո՛վ Տէր նայէ՛ , վասն զի նեղե-
ցայ ․ ր աղեքներս խռովեցան ․
սիրտս ներսիս դէս տակնուվրայ է ․
վասն զի խիստ շատ ապստամբե-
ցայ ․ ջ դուրսէն սուրը զա կը զրկէ ,
ու ներսը մահ կայ ։
21 Իմ հառաչանքս լսեցին ․ բայց
ինծի – մխիթարութիւն տուող չը-
կայ ․ իմ բոլոր թշնամիներս՝ իմ
թշուառութիւնս լսելով ուրա-
խացան ․ վասն զի դուն ըրիր ասի-
կա ․ ‡ կանչած օրդ պիտի բերես ․
ու անոնք ինծի պէս պիտի ըլլան ։
22 Անոնց բոլոր չարութիւնը + թող
քու առջեւդ հասնի ․ և անոնց այն-
պէս ըրէ , ինչպէս որ ինծի ըրիր իմ
բոլոր յանցանքներուս համար ․
վասն զի իմ հեծութիւններս շատ
են , ու իմ • սիրտս նուաղած է ։

ԳԼ․ Բ

1 Երեմիա կ՚ողբայ Երուսաղէմի թշուառու-
թեանը վրայ , 20 ու Աստուծոյ գանգատ կ՚ընէ
անոր համար ։

1 Ի՞նչպէս Տէրը իր բարկութեամբը
խաւարով ծածկեց Սիոնին աղջի-
կը ․ – Իսրայէլին փառքը ք երկին-
քէն վար նետեց , ու իր բարկու-
թեան օրը՝ իր ‡ ոտքերուն պա-
տուանդանը չյիշեց ։
2 Տէրը ↑ առանց խնայելու Յակո-
բին բոլոր բնակարանները կլլեց ․
Յուդայի աղջկանը ամրոցները իր
բարկութեամբը փլցուց ու հիմնա-
յատակ ըրաւ ․ Ւ թագաւորութիւ-
նը ու անոր իշխանները պղծեց ։
3 Սաստիկ բարկութեամբ Իսրայէ-
լին բոլոր եղջիւրը փշրեց ․ Լ անոր
աջ ձեռքը՝ թշնամին երեսէն ետ
դարձուց ․ և Յակոբին մէջ Ւ կրակի
բոցի պէս բռընկեցաւ , որ անոր բո-
լորտիքը կերաւ ։
4 Ը Իր աղեղը թշնամիի պէս լարեց ․
իր աջ ձեռքովը հակառակորդի
պէս կեցաւ ․ և բոլոր Ի աչքի հաճոյ
եղողները մեռցուց ․ իր բարկու-
թիւնը կրակի պէս թափեց Սիոնի
աղջկանը խորանին մէջ ։
5 Տէրը ծ թշնամիի պէս եղաւ , Իս-
րայէլը կլլեց ․ անոր բոլոր Ւ պա-
լատները կլլեց ․ անոր ամրոցները
կործանեց ․ և Յուդայի աղջկանը
մէջ ողբը ու կոծը շատցուց ։
6 Լ Անոր ‖ հիւղը պարտէզի հիւղի
պէս՝ բռնութեամբ կործանեց ․ ա-
նոր ժողովատեղին աւրեց ․ Տէրը
Սիոնի մէջ Ւ հանդիսաւոր տօնը ու
շաբաթը մոռցուց ․ և իր սաստիկ
բարկութեամբը թագաւորը ու
քահանան անարգեց ։
7 Տէրը իր սեղանը մերժեց , ու իր
սրբարանէն զզուեցաւ ․ անոր պա-
լատներուն պարիսպները թշնամիին
ձեռքը մատնեց ․ անոնք ծ Տէրոջը
տանը մէջ հանդիսաւոր տօնի օ-
րուան պէս ձայն տուին ։
8 Տէրը խորհեցաւ Սիոնի աղջկանը

Ն. Ք. Գ Ք.
ԻԲԲ 588

ջ բ Օր. Լբ. 25 ։ Եզեկ. Է. 15 ։
– Հմր 2 ։
‡ Ես. Ժգ. Ը ։ Երեմ. Խզ. Ը ։
+ Սաղ. ՃԹ. 15 ։
• Գլ. Ե. 17 ։

ա բ Թագ. Ա. 19 ։
ք Մատ. ԺԱ. 23 ։
‡ Ա Մն. Իը. 2 ։ Սաղ. ՂԹ. 5 ։ ՃԼԲ. 7 ։
↑ Հմր 17, 21 ։ Գլ. Գ. 43 ։
Ւ Սաղ. ՁԹ. 39 ։
Լ Սաղ. Հդ. 11 ։
Ւ Սաղ. ՁԹ. 46 ։
Ը Ես. Կգ. 10 ։ Հմր 5 ։
Ի Եզեկ. Իդ. 25 ։
ծ Հմր 4 ։ Երեմ. Լ. 14 ։
Ւ դ Թագ. ԻԵ. 9 ։ Երեմ. ԾԲ. 13 ։
Լ Սաղ. Ձ. 12 ։ ՁԹ. 40 ։ Ես. Ե. 5 ։
‖ Կամ՝ ցանկը՝ պարտէզի ցանկի պէս
Ւ Գլ. Ա. 4 ։ Սոփ. Գ. 18 ։
ծ Սաղ. ՀԴ. 4 ։

պարիսպը աւրել ․ լարը քաշեց ․ իր ձեռքը կործանելէն ետ չդարձուց ․ պատնէշին ու պարսպին սուգ բռնել տուաւ ․ անոնք մէկտեղ տրտմութեան մէջ են ։

9 Անոր դռները գետինը անցան ․ անոր նիգերը աւրեց ու կոտրեց ․ անոր թագաւորը ու իշխանները ազգաց մէջն են ․ օրէնք չկայ ․ անոր մարգարէներն ալ Տէրոջմէ տեսիլք չեն գտներ ։

10 Սիօնի աղջկանը ծերերը գետնի վրայ նստած՝ լուռ կը կենան ․ իրենց գլխուն վրայ հող դրին ․ քուրձեր հագան ․ Երուսաղէմի կոյսերը գլուխնին գետինը իջեցուցին ։

11 Իմ ժողովուրդիս աղջկանը բեկմանը համար՝ աչքերս արցունք թափելէն աւրեցան ․ աղիքներս խռովեցան ․ լեարդս գետինը թափեցաւ ․ վասն զի տղաքները ու կաթնկերները՝ քաղաքին հրապարակներուն մէջ կը մարին ։

12 Անոնք իրենց մայրերուն կ՚ըսեն ․ Ո՞ւր է ցորեն ու գինի, երբոր վիրաւորուածներու պէս կը մարին քաղաքին հրապարակներուն մէջ, ու երբոր իրենց հոգին կ՚աւանդեն իրենց մայրերուն գրկացը մէջ ։

13 Քեզի ի՞նչ բան վկայութիւն բերեմ ․ քեզի ի՞նչ օրինակ բերեմ՝ ով Երուսաղէմի աղջիկը ․ քեզ մխիթարելու համար՝ քեզի ի՞նչ նմանութիւն բերեմ՝ ով Սիօնին կոյս աղջիկը ․ քանզի քու խրամատութիւնդ ծովու չափ մեծ է ․ ո՞վ կրնայ քեզ բժշկել ։

14 Քու մարգարէներդ քեզի համար սնոտի ու յիմարական տեսիլքներ տեսան, և քու անօրէնութիւնդ չյայտնեցին, որ քու գերութիւնդ ետ դարձրնեն ․ հապա քեզի համար սնոտի տեսիլքներ, ու մոլորութիւններ տեսան ։

15 Բոլոր ճամբայէ անցնողները քեզի համար ծափ զարկին, և սուլելով գլուխնին շարժեցին Երուսաղէմին աղջկանը համար, ըսելով ․ Ա՞ս է այն քաղաքը՝ որ Գեղեցկութեան կատարելութիւն ու Բոլոր երկրին ուրախութիւնը կ՚ըսուէր ։

16 Քու բոլոր թշնամիներդ՝ իրենց բերանը քու վրադ բացին ․ և սուլելով ակռայ կճռեցուցին, ու ըսին ․ Զանիկայ կլլեցինք ․ ահա աս է մեր սպասած օրը ․ գտանք, տեսանք զանիկայ ։

17 Տէրը իր խորհածը կատարեց ․ առջի օրերէն պատուիրած խօսքը 'ի գործ դրաւ ․ փլցուց ու չխնայեց ․ և թշնամին քու վրադ ուրախացուց ․ քու թշնամիներուդ եղջիւրը բարձրացուց ։

18 Անոնց սիրտը Տէրոջը աղաղակեց ․ ով Սիօնի աղջկանը պարիսպը՝ ցորեկ ու գիշեր հեղեղի պէս արցունք թափէ ․ քեզի հանգիստ մի՛ տար ․ աչքիդ բիբը չդադարի ։

19 Ելի՛ր, գիշերով աղաղակէ՝ պահերուն սկիզբը ․ քու սիրտդ ջուրի պէս թափէ Տէրոջը երեսին առջևը ․ ձեռքերդ դէպ 'ի անոր վերցուր քու տղոցդ հոգիներուն համար, որոնք ամէն փողոցներուն գլուխը անօթութենէ կը մարին ։

20 Տե՛ս ով Տէր, ու նայէ ․ որո՞ւն այսպէս ըրիր ․ միթէ կնիկներ իրենց պտուղը՝ իրենց գրկած տղաքները ուտե՞ն ․ քահանան ու մարգարէն Տէրոջը սրբարանին մէջը ըսպաննուի՞ն ։

21 Տղան ու ծերը փողոցներու մէջ գետնի վրայ պառկեցան ․ իմ կոյսերս ու երիտասարդներս սուրէն ինկան ․ քու բարկութեանդ օրը՝ զանոնք մեռցուցիր ․ մորթեցիր, ու չխնայեցիր ։

22 Ամէն կողմէն իմ վախերս հանդիսաւոր տօնի օրուան պէս կանչեցիր, ու Տէրոջը բարկութեան օրը՝ մնացորդ կամ ազատուած չմնաց ․ իմ գրկածներս ու մեծցուցածներս՝ իմ թշնամիս հատուց ։

## ԳԼ․ Գ

1 Արդարոց ողբը իրենց թշուառութիւններուն համար ․ 22 անոնց յոյսը Աստուծոյ ողորմութիւններովը կ՚աճի ․ 37 անոնք Աստուծոյ արդարութիւնը կը ճանչնան ․ 55 ազատութեան համար, 64 ու իրենց թշնամիներուն հատուցում ըլլալու համար կ՚աղօթեն ։

1 Ես այն մարդն եմ, որ տառապանք տեսայ անոր բարկութեանը գաւազանովը ։

2 Զիս տարաւ խաւարի մէջ պտտցուց, և ոչ թէ լոյսի մէջ ։

3 Այո՛ ինծի դէմ դարձաւ ․ ամէն օր իր ձեռքը իմ վրաս դարձուց ։

4 Իմ մարմինս ու մորթս մաշեց ․ ոսկորներս կոտրտեց ։

5 Ինծի դէմ պատնէշներ շինեց, և զիս դառնութեամբ ու նեղութեամբ շրջապատեց ։

6 Զիս մութ տեղուանք նստեցուց՝ շատոնցմէ մեռածներուն պէս ։

7 Իմ բոլորտիքս ցանկ քաշեց, ու չեմ կրնար դուրս ելլել ․ իմ շղթաներս ծանրացուց ։

8 Մինչև անգամ աղաղակած ու կանչած ատենս, անիկայ իմ աղօթքս մերժեց ։

9 Իմ ճամբաներս տաշուած քարե-

Ն․ Ք․ ՂԲ․ Իբր 588

Բ Թագ․ ի․ 13 ։ Եսա․ ԼԴ․ 11 ։ — Երեմ․ ԾԱ․ 30 ։ — Բ Օր․ ԻԸ․ 36 ։ Դ Թագ․ ԻԴ․ 15 ։ ԻԵ․ 7 ։ Գլ․ Ա․ 3 ։ Դ․ 20 ։ — Բ Մն․ ԺԵ․ 3 ։ — Սաղ․ ՀԴ․ 9 ։ Եզեկ․ Է․ 26 ։ — Յոբ․ Բ․ 13 ։ Եսա․ Գ․ 26 ։ Գլ․ Գ․ 28 ։ — Յոբ․ Բ․ 12 ։ — Եսա․ ԺԵ․ 3 ։ Եզեկ․ Է․ 18 ։ ԻԷ․ 31 ։ — Սաղ․ Զ․ 7 ։ Գլ․ Գ․ 48 ։ ևն ։ — Գլ․ Ա․ 20 ։ — Յոբ․ ԺԶ․ 13 ։ Սաղ․ ԻԲ․ 14 ։ — Հմր 19 ։ Գլ․ Դ․ 4 ։ — Գլ․ Ա․ 12 ։ Դան․ Թ․ 12 ։ — Երեմ․ Բ․ 8 ։ Ե․ 31 ։ ԺԴ․ 14 ։ ԻԳ․ 16 ։ ԻԷ․ 14 ։ ԻԹ․ 8, 9 ։ Եզեկ․ ԺԳ․ 2 ։ — Եսա․ ԾԸ․ 1 ։ — Եբր․ պատրանքներ ։ — Դ Թագ․ Թ․ 8 ։ Երեմ․ ԺԸ․ 16 ։ — Եզեկ․ ԻԵ․ 6 ։ Նաւ․ Գ․ 19 ։ — Գ Թագ․ ԺԹ․ 21 ։ Սաղ․ ԽԴ․ 14 ։ — Սաղ․ Ծ․ 2 ։ — Սաղ․ ԽԸ․ 2 ։ — Յոբ․ ԺԶ․ 9, 10 ։ Սաղ․ ԻԲ․ 13 ։ Գլ․ Գ․ 46 ։ — Սաղ․ ԾԶ․ 2 ։ — Սաղ․ ԼԵ․ 21 ։ — Ղև․ ԻԶ․ 16 ։ ևն ։ Բ Օր․ ԻԸ․ 15 ։ ևն ։ — Հմր 2 ։ — Սաղ․ ԼԹ․ 16 ։ ԾԹ․ 42 ։

Ն․ Ք․ ՂԲ․ Իբր 588

Հմր 8 ։ — Երեմ․ ԺԴ․ 17 ։ Գլ․ Ա․ 16 ։ — Սաղ․ ՃԺԹ․ 147 ։ — Սաղ․ ԿԲ․ 8 ։ — Եսա․ ԾԱ․ 20 ։ Գլ․ Դ․ 1 ։ Նաւ․ Գ․ 10 ։ — Հմր 11 ։ — Ղև․ ԻԶ․ 29 ։ Բ Օր․ ԻԸ․ 53 ։ Երեմ․ ԺԹ․ 9 ։ Գլ․ Դ․ 10 ։ Եզեկ․ Ե․ 10 ։ — Գլ․ Դ․ 13, 16 ։ — Բ Մն․ ԼԶ․ 17 ։ — Գլ․ Դ․ 43 ։ — Սաղ․ ԼԱ․ 13 ։ Երեմ․ Զ․ 25 ։ ԽԶ․ 5 ։ — Ովս․ Թ․ 12, 13 ։

Յոբ․ ԺԹ․ 8 ։ — Սաղ․ ԾԱ․ 8 ։ Եսա․ ԼԸ․ 13 ։ Երեմ․ Ծ․ 17 ։ — Սաղ․ ՁԸ․ 5, 6 ։ ՃԽԳ․ 3 ։ — Յոբ․ Գ․ 23 ։ ԺԹ․ 8 ։ Ովս․ Բ․ 6 ։ — Յոբ․ Լ․ 20 ։ Սաղ․ ԻԲ․ 2 ։ — Եբր․ գոցեց ․ արգիլեց ։

բով շրջապատեց. իմ շաւիղներս ծռեց։
10 Անիկայ ինծի դարանակալ արջու պէս, ու ծածուկ տեղուանք պահուըտած առիւծի պէս եղաւ։
11 Իմ ճամբաներս խոտորցուց, և զիս փառատեց. զիս ամայի ըրաւ։
12 Իր աղեղը լարեց. ու զիս նետի նպատակի պէս կայնեցուց։
13 Իր նետերը երիկամունքներուս մէջը խոթեց։
14 Իմ բոլոր ժողովուրդիս ծաղր եղայ, ու բոլոր օրը անոնց երգը։
15 Զիս դառնութիւններով կշտացուց. զիս օշինդրով գինովցուց։
16 Նաև ակռաներս խիճերով կոտրտեց. զիս մոխիրով ծածկեց։
17 Այսպէս իմ հոգիս խաղաղութենէ հեռացուցիր. բարիքը մոռցայ.
18 Ու ըսի. Կորսուեցաւ իմ զօրութիւնս և իմ ակնկալութիւնս Տէրոջմէ։
19 Յիշէ՛ իմ տառապանքս ու թշուառութիւնս, օշինդրը ու դառնութիւնը։
20 Իմ հոգիս միշտ կը յիշէ զանոնք, ու իմ ներսի զիս կը նուաստանայ։
21 Ասիկայ միտքս կը բերեմ, անոր համար յոյս կ'ունենամ.
22 Տէրոջը ողորմութիւններէն է, որ չհատանք. վասն զի անոր ողորմութիւնը չպակսեցաւ.
23 Անոնք ամէն առտու կը նորոգուին. քու ճշմարտութիւնդ մեծ է։
24 Իմ հոգիս ըսաւ. Տէրը իմ բաժինս է. ատ պատճառով անոր պիտի յուսամ։
25 Տէրը բարի է իրեն սպասողներուն, զինք փնտռող հոգիին։
26 Տէրոջը փրկութեանը սպասելը ու լռութեամբ յուսալը աղէկ է։
27 Աղէկ է մարդուս, որ իր երիտասարդութեան ատենը լուծը կրէ։
28 Առանձին կը նստի, ու լուռ կը կենայ. քանզի լուծը իր վրան առաւ։
29 Իր բերանը հողին կու տայ, ըսելով Թէ՛ Գուցէ յոյս կայ.
30 Իր ծնօտը զարնողին կու տայ. նախատինքով կը կշտանայ։
31 Բայց Տէրը յաւիտեան չմերժեր.
32 Վասն զի թէև ցաւ կու տայ, իր ողորմութեանը շատութիւնովը գթութիւն ալ կ'ընէ։
33 Քանզի իր կամքովը նեղութիւն չտար, ու մարդու որդիները չտրտմեցըներ։
34 Երկրիս բոլոր բանտարկեալները ոտից տակ ճզմելը,
35 Բարձրելոյն առջևը մարդու մը իրաւունքը ծռելը,
36 Մարդու մը՝ իր դատին մէջ անիրաւութիւն ընելը՝ Տէրոջը հաճելի չէ։
37 Ո՞վ է անիկայ որ կը խօսի, ու անոր խօսքը կը կատարուի, քանի որ Տէրը հրամայած չէ։
38 Միթէ բարիքը ու չարիքը Բարձրելոյն բերնէն չե՞լլեր։
39 Ապրող մարդը ինչո՞ւ տրտունջ ընէ, մարդը իր մեղքերուն պատիժին համար"։
40 Մեր ճամբաները քննենք ու փորձենք, և Տէրոջը դառնանք։
41 Մեր սիրտերը մեր ձեռքերուն հետ երկինքը եղող Աստուծոյն վերցնենք։
42 Մենք յանցանք ըրինք, ու ապստամբեցանք. դուն թողութիւն չտուիր։
43 Բարկութեամբ ծածկեցիր երեսդ, ու մեզ հալածեցիր. մեռցուցիր ու չխնայեցիր։
44 Քեզ ամպով ծածկեցիր, որ մեր աղօթքը չանցնի։
45 Մեզ ժողովուրդներուն մէջտեղը խոտան ու անարգ ըրիր։
46 Մեր բոլոր թշնամիները մեզի դէմ բերաննին բացեր են։
47 Մեր վրայ վախ ու գուբ, աւերում ու կոտորած եկաւ։
48 Իմ ժողովուրդիս աղջկանը բեկմանը համար՝ աչքես ջուրի հեղեղներ կ'իջնեն։
49 Իմ աչքս անդադար արցունք կը թափէ. ու բնաւ հանգստութիւն պիտի չունենայ,
50 Մինչև որ Տէրը երկինքէն նայի ու տեսնէ։
51 Իմ քաղաքիս բոլոր աղջիկներուն համար՝ աչքս հոգւոյս նեղութիւն կու տայ։
52 Իմ թշնամիներս զուր տեղը՝ անդադար զիս ճնճղուկի պէս կ'որսան։
53 Իմ կեանքս գուբի մէջ կտրեցին. վրաս քար նետեցին։
54 Ջուրերը գլխէս վեր բարձրացան. ըսի թէ, Ես կորեցայ.
55 Խորունկ գուբէն քու անունդ կանչեցի՝ ո՛վ Տէր։
56 Իմ ձայնս լսեցիր. իմ հառաչանքիս ու աղաղակիս քու ականջդ մի՛ գոցեր։
57 Քեզի կանչած օրս մօտեցար. ըսիր թէ՝ Մի՛ վախնար։
58 Իմ հոգւոյս դատը վարեցիր, ո՛վ Տէր. իմ կեանքս ազատեցիր։
59 Ո՛վ Տէր՝ ինծի եղած զրկանքը տեսար. իմ իրաւունքս պաշտպանէ։
60 Անոնց բոլոր վրէժխնդրութիւնը՝

Ն. Ք. ԴՔ. Իրր 588

ᶜանոնց ինծի դէմ ըրած բոլոր դիտաւորութիւնները տեսար ։
61 Անոնց նախատինքը լսեցիր՝ ով Տէր, անոնց ինծի դէմ ըրած բոլոր դիտաւորութիւնները,
62 Իմ վրաս ելլողներուն շրթունքները, ու ամէն օր ինծի դէմ անոնց խորհած չարքերը ։
63 ᵈ Անոնց նստելուն ու ելլելուն նայէ․ ᵉ ես անոնց երգն եմ ։
64 Ո՛վ Տէր՝ ᶠ անոնց հատուցում պիտի ընես՝ իրենց ձեռացը գործքերուն համեմատ ։
65 Անոնց սրտի * տրտմութիւն պիտի տաս․ քու անէծքդ պիտի ըլլայ անոնց ։
66 Բարկութեամբ պիտի հալածես զանոնք, ու ᵍ Տէրոջը ʰ երկինքներուն տակէն բնաջինջ պիտի ընես ։

ԳԼ. Դ

1 Սիոն իր ողորմելի վիճակին վրայ կ'ողբայ․ 13 իր մեղքերը կը խոստովանի ։ 21 Եդովմին պատուհասը կ'ըսէ ։ 22 Սիոն կը մխիթարուի ։

1 Ոսկին ի՜նչպէս իր գոյնը կորսնցուց, ու մաքուր ոսկին փոխուեցաւ․ սրբարանին քարերը ᵃ ամէն փողոցներուն գլուխը թափուեցան ։
2 Սիոնի պատուական տղաքները՝ որոնք ընտիր ոսկիի հաւասար էին, ի՜նչպէս բրուտի ձեռքով շինուած ᵇ խեցեղէն ամաններու պէս սեպուեցան ։
3 † Վիշապները անգամ ծիծերնին կը հանեն, ու իրենց լակոտներուն կաթ կու տան․ իմ ժողովուրդիս աղջիկը անապատի ᶜ ջայլեմներու պէս անգութ եղաւ ։
4 Կաթնկերին լեզուն ծարաւութենէն ᵈ իր քիմքը փակաւ․ ᵉ տղաքները հաց ուզեցին․ բայց անոնց ջարդող չկար ։
5 Ազնիւ կերակուրներ ուտողները՝ փողոցներուն մէջը յուսահատ մնացին․ կարմիր հանդերձներով մեծցողները՝ աղբանոցներ գրկեցին ։
6 Եւ իմ ժողովուրդիս աղջկանը անօրէնութիւնը՝ Սոդոմին մեղքէն մեծ եղաւ․ ᶠ որ ան մէկ վայրկեանի մէջ տակնուվրայ եղաւ, առանց մէկու մը ձեռքերը անոր դպչելու ։
7 Անոր ազնուականները ձիւնէն մաքուր՝ կաթէն ճերմակ էին․ անոնց մարմինը ‡ յակինթներէն կարմիր էր․ անոնց կերպարանքը շափիւղայի նման էր ։
8 ʰ Անոնց դէմքը ածուխէն աւելի սև եղաւ․ ու փողոցներուն մէջը չեն ճանչցուիր․ ⁱ անոնց մորթը իրենց ոսկորներուն փակաւ․ չորցաւ ու փայտի պէս եղաւ ։
9 Սուրէ մեռածները՝ անօթութենէ մեռածներէն երջանիկ էին․ վասն զի ասոնք ագարակի արդեանցը պակսութենէն մաշեցան ու մեռան ։
10 ᵏ Ողորմած կնիկներուն ձեռքերը ˡ իրենց տղաքը եփեցին․ իմ ժողովուրդիս աղջկանը կոտորածին ատենը՝ ᵐ անոնց կերակուր եղան ։
11 Տէրը իր սրտմտութիւնը կատարեց․ ⁿ իր սաստիկ բարկութիւնը թափեց․ և Սիոնի մէջ ᵒ կրակ բռնկցուց, որ անոր հիմերը կերաւ ։
12 Երկրի թագաւորները, ու աշխարհի բոլոր բնակիչները չհաւատացին թէ հակառակորդը ու թշնամին Երուսաղէմի դռներէն պիտի մտնէ ։
13 ᵖ Անոր մարգարէներուն մեղքերէն, անոր քահանաներուն անօրէնութիւններէն՝ ᵠ որոնք անոր մէջտեղը արդարներուն արիւնը թափեցին,
14 Փողոցներուն մէջը կոյրերու պէս աստանդական պտըտեցան․ ʳ արիւնով պղծուեցան․ ˢ այնպէս որ մարդ մը կարող չէր անոնց զգեստներուն դպչելու ։
15 ‖ Անոնց կը կանչէին․ Ե՛տ քաշուեցէք՝ ով ᵗ պիղծեր", ե՛տ քաշուեցէք, ե՛տ քաշուեցէք, մի՛ դպչիք․ անոնք փախան ու աստին անդին պտըտեցան․ ազգերուն մէջ ըսուեցաւ․ Անոնք մէյմըն ալ հոս չբնակին ։
16 Տէրոջը բարկութիւնը ցրուեց զանոնք․ անոնց մէյմըն ալ չնայիր․ քահանայից երեսին պատիւ չըրին․ ᵘ ծերերուն գթութիւն չըրին ։
17 ᵛ Մեզի ըլլալու օգնութեանը համար՝ պարապ տեղը մինչև հիմա աչքերնիս մաշեցան․ դիտելով ըսպասեցինք ազգի մը՝ որ չէր կրնար մեզ ազատել ։
18 ʷ Մեր քայլերը կ'որսան, որ մեր փողոցներուն մէջը չպտըտինք․ ˣ մեր վախճանը մօտեցաւ․ մեր օրերը լեցուեցան․ յիրաւի մեր վախճանը հասաւ ։
19 Մեզ հալածողները ʸ երկինքի արծիւներէն արագընթաց եղան․ մեզ լեռներու վրայ սաստիկ հալածեցին․ անապատի մէջ մեզի համար դարանամուտ եղան ։
20 Մեր ᶻ ռունգացը շունչը՝ Տէրոջը օծեալը՝ անոնց որոգայթներուն մէջը բռնուեցաւ, որուն համար մենք կ'ըսէինք․ Ազգերուն մէջ անոր հովանիին տակը պիտի ապրինք ։
21 Ցնծա՛ և ուրախ եղիր՝ ով Եդովմի աղջիկը, որ Հուս երկրին մէջ

Ն. Ք. ԴՔ. Իրր 588

ᶜ Երեմ. ԺԱ. 19 ։
ᵈ Սաղ. ԾԹ. 2 ։
ᵉ Հմր 14 ։
ᶠ Սաղ. ԻԸ. 4 ։ Տես Երեմ. ԺԱ. 20 ։ Բ Տիմ. Դ. 14 ։
* Կամ՝ ծածկոց ։
ᵍ Սաղ. Ը. 3 ։
ʰ Բ Օր. ԻԵ. 19 ։ Երեմ. Ժ. 11 ։
ᵃ Գլ. Բ. 19 ։
ᵇ Եսա. Լ. 14 ։ Երեմ. ԺԹ. 11 ։ Բ Կոր. Դ. 7 ։
† Կամ՝ Ճագարները
ᶜ Յոբ. ԼԹ. 14, 16 ։
ᵈ Սաղ. ԻԲ. 15 ։
ᵉ Գլ. Բ. 11, 12 ։
ᶠ Յոբ. ԻԴ. 8 ։
ᵍ Ծն. ԺԹ. 25 ։
‡ Կամ՝ բուստերէն
ʰ Գլ. Ե. 10 ։ Յովէլ. Բ. 6 ։ Նաւ. Բ. 10 ։
ⁱ Սաղ. ՃԲ. 5 ։
ᵏ Եսա. ԽԹ. 15 ։
ˡ Գլ. Բ. 20 ։
ᵐ Բ Օր. ԻԸ. 57 ։ Դ Թագ. Զ. 29 ։
ⁿ Երեմ. Է. 20 ։
ᵒ Բ Օր. ԼԲ. 22 ։ Երեմ. ԻԱ. 14 ։
ᵖ Երեմ. Ե. 31 ։ Զ. 13 ։ ԺԴ. 14 ։ ԻԴ. 11, 21 ։ Եզեկ. ԻԲ. 26, 28 ։ Սոփ. Գ. 4 ։
ᵠ Մատ. ԻԳ. 31, 37 ։
ʳ Երեմ. Բ. 34 ։
ˢ Թուոց. ԺԹ. 16 ։
‖ Կամ՝ Անոնց համար կը կանչէին. Ե՛տ քաշուեցէք ։ պիղծ են.
ᵗ Ղև. ԺԳ. 45 ։
ᵘ Գլ. Ե. 12 ։
ᵛ Դ Թագ. ԻԴ. 7 ։ Եզ. Ի. 5 ։ Լ. 6, 7 ։ Երեմ. ԼԷ. 7 ։ Եզեկ. ԻԹ. 16 ։
ʷ Դ Թագ. ԻԵ. 4, 5 ։
ˣ Եզեկ. Է. 2, 3, 6 ։ Ամով. Ը. 2 ։
ʸ Բ Օր. ԻԸ. 49 ։ Երեմ. Դ. 13 ։
ᶻ Ծն. Բ. 7 ։
Գլ. Բ. 9 ։
Երեմ. ԽԲ. 9 ։ Եզեկ. ԺԲ. 13 ։ ԺԹ. 4, 8 ։
Տես Ժող. ԺԱ. 9 ։

Ն. Ք. ԳՓ. իբր 588

կը բնակիս · ա Քեզի ալ պիտի անցնի բաժակը · պիտի գինովնաս , ու ինքզինքդ պիտի մերկացընես ։
22 բ Քու անօրէնութիւնդ վերջացաւ՝ ով Սիօնի աղջիկը · քեզ մէյ մըն ալ գերի պիտի չքշէ · գ Քու անօրէնութեանդ այցելութիւն պիտի ընէ՝ ով Եդովմի աղջիկը · քու մեղքերդ պիտի յայտնէ ։

ա Երեմ. իե. 15. 16. 21 ։ Աբդ. 10 ։ Հես. ի. 2 ։
բ Սաղ. ճլէ. 7 ։

## ԳԼ. Ե

1–22 Աղօթքի մէջ Սիօնին ցաւալի գանգատը առ Աստուած ։

1 Մ՚եզի եղածը ա յիշէ՝ ով Տէր . նայէ՛ , ու բ մեր նախատինքը տե՛ս ։
2 գ Մեր ժառանգութիւնը օտարներուն անցաւ , մեր տուները՝ օտարազգիներուն ։
3 Հայր չունեցող որբեր եղանք · մեր մայրերը որբեւարիններու պէս են ։
4 Մեր ջուրը ստակով խմեցինք · մեր փայտը գնով կու գայ ։
5 դ Լուծը մեր պարանոցին վրայ ըլլալով հալածուեցանք · կ՚աշխատինք , ու հանգստութիւն չունինք ։
6 Հացով կշտանալու համար՝ դէպ 'ի ե Եգիպտոս ու Ասորեստան ձեռք * երկընցուցինք ։
7 զ Մեր հայրերը մեղք գործեցին , և է չկան . ու անոնց անօրէնութիւններուն պատիժը մենք կը կրենք ։
8 ը Ծառաներ տիրեցին մեր վրայ . անոնց ձեռքէն մեզ ազատող չկայ ։
9 Անապատի սուրին երեսէն մեր հացը՝ մեր կեանքին վտանգովը ձեռք բերինք ։
10 Սովին սաստկութեանը պատճառաւ՝ թ մեր մորթը փուռի պէս սեւցաւ ։
11 ժ Կիները Սիօնի մէջ խայտառակեցին , ու կոյսերը Յուդայի քաղաքներուն մէջ ։
12 Իշխանները † անոնց ձեռքովը" կախուեցան . ի ծերոց երեսին պատիւ չըրին ։
13 լ Երիտասարդները երկանաքարեր վերցուցին , ու տղաքը փայտի տակ ինկան ։
14 Ծերերը դադարեցան դուռը նստելէն , ու երիտասարդները իրենց երաժշտութիւնէն ։
15 Մեր սրտին ուրախութիւնը դադարեցաւ . մեր կաքաւելը սուգի փոխուեցաւ ։
16 Մեր գլխուն խ թագը ինկաւ . հիմա վա՜յ մեզի , վասն զի մեղք գործեցինք ։
17 Ասոր համար ծ մեր սիրտը նուաղած է . ասոնց պատճառաւը կ աչքերնիս խաւարեցան՝
18 Սիօն լեռանը պատճառաւ՝ որ ամայի եղաւ . անոր վրայ աղուէսներ կը պտըտին ։
19 հ Դուն ով Տէր՝ յաւիտեան կը մնաս . Քու աթոռդ դարէ 'ի դար կը տեւէ ։
20 ձ Ինչո՞ւ համար յաւիտեան մեզ կը մոռնաս ։ Ու երկար ժամանակ մեզ կը թողուս ։
21 ղ Քեզի՛ դարձուր մեզ՝ ով Տէր . ու դառնանք . մեր օրերը առջինին պէս նորոգէ ։
22 Սակայն դուն ճ բոլորովին մեզ մերժեցիր . մեր վրայ խիստ շատ բարկացար ։

ա Սաղ. ձթ. 50. 51 ։
բ Գլ. բ. 15 ։ Սաղ. ՀԹ. 4 ։
գ Սաղ. ՀԹ. 1 ։
դ Բ Օր. իը. 48 ։ Երեմ. իը. 14 ։
ե Ովս. ժբ. 1 ։
* Եբր. տուինք ։
զ Երեմ. լա. 29 ։ Եզեկ. ժը. 2 ։
է Ծն. խբ. 13 ։ Զաք. ա. 5 ։
ը Նեեմ. ե. 15 ։

Ն. Ք. ԳՓ. իբր 588

թ Յոբ. լ. 30 ։ Սաղ. ճժթ. 83 ։ Գլ. դ. 8 ։
ժ Եսա. ժգ. 16 ։ Զաք. ժդ. 2 ։
† Կամ՝ իրենց ձեռքէն
ի Եսա. խէ. 6 ։ Գլ. դ. 16 ։
լ Դատ. ժզ. 21 ։
խ Յոբ. ժթ. 9 ։ Սաղ. ձթ. 39 ։
ծ Գլ. ա. 22 ։
կ Սաղ. զ. 7 ։ Գլ. բ. 11 ։
հ Սաղ. թ. 7 ։ ժ. 16 ։ իթ. 10 ։ ղ. 2 ։ ճբ. 12. 26. 27 ։ ճխե. 13 ։ Ամբ. ա. 12 ։
ձ Սաղ. խե. 6 ։
ղ Սաղ. ժգ. 1 ։
ճ Սաղ. ձ. 3. 7. 19 ։ Երեմ. լա. 18 ։

# ՄԱՐԳԱՐԷՈՒԹԻՒՆ ԵԶԵԿԻԷԼԻ

Ն․ Ք․ դք․ իբր 595

## ԳԼՈՒԽ Ա

*1 Եզեկիէլին մարգարէութեան ժամանակը՝ Քոբար գետին քովը․ 4 անոր տեսիլքը՝ որուն մէջ չորս քերովբէներ, 15 չորս անիւներ, 26 ու Աստուծոյ փառքը տեսաւ։*

1 Ու եղաւ որ երեսուներորդ տարին՝
չորրորդ ամսոյն, ամսուն հինգին՝
երբոր ես գերիներուն մէջը Քո-
բար գետին քովն էի, երկինքը
բացուեցաւ, ու Աստուծոյ տե-
2 սիլքները տեսայ։ Ամսուն հինգ-
երորդ օրը՝ այսինքն Յովաքին
թագաւորին գերութեանը հինգ-
3 երորդ տարին, Քաղդէացւոց երկրին
մէջ՝ Քոբար գետին քովը՝ Բու-
զիի որդւոյն Եզեկիէլ քահանային
յայտնապէս Տէրոջը խօսքը եղաւ․
և հոն անոր վրայ Տէրոջը ձեռքը
եղաւ։
4 Ու տեսայ որ ահա հիւսիսային
կողմէն մրրկալից հով՝ մեծ ամպ
ու բռնկած կրակ կու գար, որուն
բոլորտիքը պայծառութիւն կար,
ու մէջտեղէն՝ կրակին մէջէն ոսկե-
պղինձի նմանութիւն մը կ'երե-
5 ւար։ Եւ անոր մէջը չորս կեն-
դանիի կերպարանք կար․ ու ա-
նոնց երևոյթը աս էր․ անոնք
6 մարդու կերպարանք ունէին։ Եւ
ամէն մէկը չորս երես ունէր․ ու
անոնց ամէն մէկը չորս թև ունէր։
7 Եւ անոնց ոտքերը՝ շիտակ ոտքեր
էին, ու անոնց ոտքերուն թաթը՝
զուարակի ոտքին թաթին պէս
էր․ ու փայլուն պղնձի պէս կը
8 փայլէին։ Եւ անոնց չորս կող-
մերը՝ անոնց թևերուն տակը մար-
դու ձեռքեր կար․ ու չորսն ալ
9 երեսներ ու թևեր ունէին։ Ա-
նոնց թևերը իրարու կցուած էին․
անոնք երթալու ատեննին չէին
դառնար․ ամէն մէկը շիտակ յառաջ
10 կ'երթար։ Եւ անոնց երեսնե-
րուն ձևը մարդու էր․ չորսն ալ մար-
դու երես ունէին, ու աջ կողմէն
առիւծի երես․ նաև չորսն ալ ձախ
կողմէն եզի երես, ու չորսն ալ
11 արծիւի երես ունէին։ Ու անոնց
երեսները այսպէս էին․ և անոնց
թևերը վերէն կը տարածուէին․
երկուքը իրարու կցուած էին, ու
երկուքը անոնց մարմինը կը ծած-
12 կէին։ Եւ ամէն մէկը շիտակ յա-
ռաջ կ'երթար․ ուր հոգին ուր
որ երթալու ըլլար, անոնք հոն
կ'երթային․ գացած ատեննին
13 չէին դառնար։ Եւ կենդանինե-
րուն կերպարանքը՝ անոնց երևոյ-
թը՝ կրակի վառած կայծերու
պէս՝ ջահերու երևոյթին պէս էր,
որ կենդանիներուն մէջտեղը կը
պտըտէր․ ու այն կրակը լուսափայլ
էր․ ու կրակէն փայլակներ կ'ելլէր։
14 Եւ կենդանիները փայլակի երևոյ-
թին պէս կը վազէին, ու կը
դառնային։
15 Ու կենդանիներուն նայեցայ, և
ահա գետնի վրայ՝ կենդանիներուն
ամէն մէկուն քովը՝ չորս երեսով
16 անիւ մը կար։ Անիւներուն
երևոյթը ու անոնց շինուածքը
ոսկեքարի կը նմանէր․ և չոր-
սին ձևը մէկ էր․ ու անոնց երևոյ-
թը ու շինուածքը այնպէս էր,
որպէս թէ անիւ անիւի մէջ ե-
17 ղած ըլլար։ Գացած ատեննին՝
իրենց չորս կողմերուն վրայ կ'եր-
թային․ գացած ատեննին իրենց
աջ կամ ձախ կողմը չէին դառնար։
18 Եւ անոնց շրջանակները բարձր ու
ահեղ էին․ և չորսին ալ շրջա-
նակները ամէն կողմէն աչքերով
19 լեցուն էին։ Ու երբոր կենդանի-
ները կ'երթային, անիւներն ալ
անոնց քովէն կ'երթային․ ու երբոր
կենդանիները երկրի երեսէն կը վե-
րանային, անիւներն ալ կը վերա-
20 նային։ Ոգին ուր որ երթալու
ըլլար, անոնք հոն՝ ոգիին գացած
տեղը կ'երթային․ անիւներն ալ
անոնց հետ մէկտեղ կը վերանային․
քանզի անիւներուն մէջը կենդա-
21 նիներուն ոգին կար։ Երբոր ա-
նոնք կ'երթային, ասոնք ալ կ'եր-
թային, ու երբոր անոնք կը կայ-
նէին, ասոնք ալ կը կայնէին․ ու
երբոր անոնք երկրի երեսէն կը վե-
րանային, անիւները անոնց հետ կը
վերանային․ քանզի անիւներուն
մէջը կենդանիներուն ոգին կար։
22 Եւ կենդանիներուն գլխուն վրայ՝
երկինքի հաստատութեանը նմանու-
թիւնը՝ վերէն անոնց գլուխներուն
վրայ տարածուած էր՝ լուսափայլ

Ն․ Ք․ դք․ իբր 595

Ն. Ք. ԶՓ. Իրր 595

23 ակնվանիի նման ։ Եւ ան հաստա-
տութեանը տակը՝ անոնց թեւե-
րը իրարու կը շիտկուէին . ամէն
մէկը մէկ կողմէն իր մարմինը ծածկող
երկու թեւ ունէր , և ամէն մէկը մէ-
կալ կողմէն իր մարմինը ծածկող
24 երկու թեւ ունէր ։ Ու երբոր կ'եր-
թային , անոնց թեւերուն ձայնը
լսեցի , շատ ջուրերու ձայնին պէս՝
Ամենակարողին ձայնին պէս , աղ-
մուկի ձայնի , բանակի ձայնի
պէս . երբոր կը կայնէին , իրենց
25 թեւերը կ'իջեցնէին ։ Ու երբոր
անոնք կը կայնէին , թեւերնին
կ'իջեցնէին , անոնց գլխուն վրայ
եղող հաստատութենէն ձայն մը
կ'ելլէր ։
26 Եւ անոնց գլխուն վրայ եղող
հաստատութենէն վեր՝ շափիւղայ
քարի երեւոյթով աթոռի նմանու-
թիւն մը կար , ու ան աթոռի
նմանութեանը վրայ՝ մարդու կեր-
պարանքով նմանութիւն մը կար
27 վերէն ։ Եւ անոր երիկամանցը ե-
րեւութէն վեր՝ ոսկեպղնձի նման՝
բոլորտիքը ներսը կրակի նմա-
նութեան պէս տեսայ . ու երիկա-
մանցը երեւութէն վար՝ կրակի նմա-
նութեան պէս տեսայ . ու պայծա-
28 ռութեամբ շրջապատած էր . Ինչ-
պէս է անձրեւի օրը ամպի մէջ ե-
ղող ծիածանին երեւոյթը , այնպէս
էր ան շրջապատած պայծառու-
թեանը երեւոյթը ։ Ասիկայ Տէրո-
ջը փառացը նմանութեանը երե-
ւոյթն էր . ու երբոր տեսայ , ե-
րեսիս վրայ ինկայ . ու մէկ խօսողի
մը ձայնը լսեցի ։

Գ. Ժ. 5 ։
Գլ. Խգ. 2 ։ Դան. Ժ. 6 ։ Յայտ. Ա. 15 ։
Յոր. Լէ. 4. 5 ։ Սաղ. ԻԹ. 3. 4 ։ Կը. 33 ։
Գլ. Ժ. 1 ։
Ելք. Իդ. 10 ։
Գլ. Ը. 2 ։
Յայտ. Դ. 3 ։ Ժ. 1 ։
Գլ. Գ. 23 ։ Ը. 4 ։
Գլ. Գ. 23 ։ Դան. Ը. 17 ։ Գոր. Թ. 4 ։ Յայտ. Ա. 17 ։

ԳԼ. Բ

1 Եզեկիելին յանձնուած պաշտօնը . 6 իրեն տրուած պատուէրը . 9 իր ծանր մարգարէութեանը տոմսը ։

1 Եւ ինծի ըսաւ . Որդի՛ մարդոյ .
ոտքերուդ վրայ կայնէ , ու
2 քեզի հետ խօսիմ ։ Ու ինծի հետ
խօսածին պէս՝ Հոգին իմ վրաս
եկաւ , և զիս ոտքերուս վրայ վեր-
ցուց . ու ինծի հետ խօսողին ձայնը
3 լսեցի . Եւ ինծի ըսաւ . Որդի՛ մար-
դոյ՝ ես քեզ Իսրայէլի որդւոցը՝
ինծի դէմ ապստամբող ապըս-
տամբներու ազգին կը խրկեմ , որ
թէ՛ իրենք և թէ իրենց հայրերը
մինչև աս օրս ինծի դէմ յանցաւոր
4 գտնուեցան . Ու անոնք պինդ-
երես և խստասիրտ որդիներ են . ես
քեզ անոնց կը խրկեմ . ու անոնց
ըսես . Տէր Եհովան այսպէս կ'ըսէ ։
5 Եւ անոնք՝ թէ՛ լսեն , և թէ զանց
ընեն , (քանզի անոնք ապստամբ-
ներու տուն են ,) սակայն Պիտի

Դան. Ժ. 11 ։
Գլ. Գ. 24 ։
Երեմ. Գ. 25 ։ Գլ. Ի. 18, 21, 30 ։
Գլ. Գ. 7 ։
Գլ. Գ. 11. 26, 27 ։
Գլ. ԼԳ. 33 ։

գիտնան թէ մէջերնին մարգարէ
կայ ։
6 Ու դուն որդի՛ մարդոյ՝ անոնցմէ
մի՛ վախնար , և անոնց խօսքերէն
մի՛ վախնար . թէև քու քովդ
«կամակոր ու ծուռ մարդիկ» կան ,
և կարիճներու քով կը բնակիս .
անոնց խօսքերէն մի՛ վախնար , և
անոնց երեսէն մի՛ զարհուրիր ,
թէև անոնք ապստամբներու տուն
7 են ։ Ու անոնց իմ խօսքերս խօ-
սիս , թէ՛ լսեն և թէ զանց ընեն .
քանզի անոնք ապստամբ են ։
8 Ու դուն որդի՛ մարդոյ՝ քեզի ը-
սածս մտիկ ըրէ . ան ապստամբ
տանը պէս ապստամբ մի՛ ըլլար .
բերանդ բաց , ու քեզի տուածս
9 կեր ։ Ու նայեցայ , և ահա ինծի
երկընցած ձեռք մը , և ահա անոր
10 մէջը գիրքի տոմս մը կար . Ու
զանիկայ իմ առջևս բացաւ . և ա-
նիկայ ներսէն ու դուրսէն գրուած
էր . ու անոր վրայ ողբեր , հառա-
չանք ու վայ գրուած կար ։

ԳԼ. Գ

1 Եզեկիէլ ան տոմսը կ'ուտէ ։ 4 Աստուած կը քաջալերէ զանիկայ . 15 կը սորվեցնէ անոր մարգարէութեան կանոնը . 22 կը յայտնէ թէ ինքը կը գոցէ ու կը բանայ մարգարէին բերանը ։

1 Եւ ինծի ըսաւ . Որդի՛ մարդոյ՝
գտածդ կեր . աս տոմսը
կեր , ու գնա Իսրայէլի տանը խօ-
2 սէ՛ ։ Եւ իմ բերանս բացի , ու ան
3 տոմսը ինծի կերցուց . Եւ ինծի
ըսաւ . Որդի՛ մարդոյ՝ աս իմ քեզի
տուած տոմսս փորիդ կերցուր , ու
աղիքներդ լեցուր . ու ես զանիկայ
կերայ . ու բերնիս մէջը մեղրի պէս
4 անուշ եղաւ ։ Ան ատենը ինծի
ըսաւ . Որդի՛ մարդոյ՝ աղէ Իսրա-
յէլի տանը գնա , ու իմ խօսքերովս
5 անոնց խօսէ՛ ։ Վասն զի դուն
դժուարիմաց խօսք և ծանր լեզու
ունեցող ազգի մը չխրկուեցար .
6 հապա Իսրայէլի տանը . Դժուա-
րիմաց խօսք ու ծանր լեզու ունե-
ցող շատ ազգերուն չէ՛ , որոնց խօս-
քերը դուն չես հասկընար . յիրաւի
թէ որ քեզ անոնց խրկէի , անոնք
7 քեզի մտիկ պիտի ընէին ։ Բայց
Իսրայէլի տունը քեզի մտիկ ընել
պիտի չուզեն . վասն զի չեն ուզեր
ինծի մտիկ ընել . Որովհետև բոլոր
Իսրայէլի տունը պնտերես ու խըս-
8 տասիրտ է ։ Ահա անոնց երեսին
դէմ քու երեսդ պինդ , ու անոնց
ճակատին դէմ քու ճակատդ պինդ
9 ըրի ։ Քու ճակատդ ալմաստ ամուր՝
անդամանդի պէս ըրի . անոնցմէ
չվախնաս , ու անոնց երեսէն չզար-
հուրիս , թէև անոնք ապստամբնե-
րու տուն են ։

Ն. Ք. ԶՓ. Իրր 595
Երեմ. Ա. 8, 17 ։ Ղու. ԺԲ. 4 ։
Երեմ. Զ. 28 ։ Տես Եփ. Թ. 18 ։ Միք. Է. 4 ։
Կամ՝ փուշեր ու տատասկներ
Գլ. Գ. 9 ։ Պետ. Գ. 14 ։
Գլ. Գ. 9, 26, 27 ։
Երեմ. Ա. 7, 17 ։
Հռ. 5 ։
Յայտ. Ժ. 9 ։
Գլ. Ը. 3 ։ Երեմ. Ա. 9 ։
Գլ. Գ. 1 ։
Գլ. Բ. 8, 9 ։
Յայտ. Ժ. 9 ։ Տես Երեմ. ԺԵ. 16 ։
Սաղ. ԺԹ. 10 ։ ՃԺԹ. 103 ։
Մատ. ԺԱ. 21, 23 ։
Յովհ. ԺԵ. 20 ։
Գլ. Բ. 4 ։
Եսա. Ծ. 7 ։ Երեմ. Ա. 18 ։ ԺԵ. 20 ։ Տես Միք. Գ. 8 ։
Երեմ. Ա. 8, 17 ։ Գլ. Բ. 6 ։

Ն. Ք. գ.Ե. 595

10 Եւ Տէրը ինծի ըսաւ. Որդի՛
մարդոյ, իմ բոլոր խօսքերս՝ որ քե-
զի պիտի խօսիմ, սրտիդ մէջը ըն-
11 դունէ՛, ու ականջներովդ լսէ՛. Եւ
գնա՛ գերիներուն մէ՛ջը մտիր՝ քու
ժողովուրդիդ որդւոցը մէջ, ու ա-
նոնց խօսէ՛, և անոնց ըսէ. ը Տէր
Եհովան այսպէս կ'ըսէ. Թէ՛ մտիկ
ընեն, և թէ զանց ընեն։
12 Ան ատենը ծ Հոգին զիս վերցուց,
ու ետևէս մեծ շարժումի ձայն մը
լսեցի, որ կ'ըսէր. Տէրոջը փառքը
13 օրհնեա՛լ ըլլայ իր տեղէն։ Եւ կեն-
դանիներուն թևոցը իրարու զար-
նելուն ձայնը, ու անոնց քովի ա-
նիւներուն ձայնը, ու մեծ շարժումի
14 ձայն լսեցի։ Եւ է Հոգին զիս վեր-
ցուց տարաւ, ու ես իմ հոգիիս
տաքութենէն դառնութեամբ գա-
ցի. ու ն Տէրոջը ձեռքը իմ վրաս
15 եղաւ զօրութեամբ։ Եւ Քոբար
գետին քովը բնակող Թելաբիբի
գերիներուն եկայ, ու խ անոնց նըս-
տած տեղը նստայ, և հոն եօթը օր
անոնց մէջը ապշած նստայ։
16 Ու եօթը օրէն ետքը՝ Տէրոջը
17 խօսքը ինծի եղաւ՝ ըսելով. ծ Որդի՛
մարդոյ՝ քեզ Իսրայէլի տանը կ դէտ
դրի. ու իմ բերնէս խօսք լսես,
ու իմ կողմանէս զանոնք զգուշա-
18 ցընես։ Երբոր ամբարշտին ըսեմ
թէ՝ Անշուշտ պիտի մեռնիս, ու
դուն զանիկայ չզգուշացընես, ու
չզրուցես որ ամբարիշտը ապրեցը-
նելու համար՝ իր չար ճամբայէն ըզ-
գուշացընես. ան ամբարիշտը հ իր
անօրէնութեանը մէջ պիտի մեռ-
նի. բայց անոր արիւնը քու ձեռ-
19 քէդ պիտի փնտռեմ։ Իսկ թէ որ
դուն ամբարիշտը զգուշացընես, ու
անիկայ իր ամբարշտութենէն ու
չար ճամբայէն չդառնայ, անիկայ
իր անօրէնութեանը մէջ պիտի
մեռնի. ձ բայց դուն քու հոգիդ ա-
20 զատած կ'ըլլաս։ Ու երբոր ղ ար-
դարը իր արդարութենէն դառնայ,
ու չարութիւն ընէ, ու ես անոր
առջևը գայթակղութիւն դնեմ որ
անիկայ մեռնի. զանիկայ չզգու-
շացընելուդ համար՝ անիկայ իր մեղ-
քին մէջը պիտի մեռնի, և անոր
ըրած արդարութիւնը պիտի չյի-
շուի. բայց անոր արիւնը քու
21 ձեռքէդ պիտի փնտռեմ։ Իսկ թէ
որ դուն ան արդարը զգուշացընես՝
որ արդարը մեղք չգործէ. ու թէ
որ անիկայ մեղք չգործէ, անիկայ
անշուշտ պիտի ապրի՝ խրատ մտիկ
ընելուն համար. ու դուն քու հո-
գիդ ազատած պիտի ըլլաս։
22 ճ Եւ հոն Տէրոջը ձեռքը իմ վրաս
եղաւ, ու ինծի ըսաւ. Ե՛լ, մ դաշ-
տը գնա, ու հոն քեզի հետ պիտի

ը Գլ. բ. 5, 7. Հմր 27.
ծ Հմր 14. Գլ. ը. 3. Տես գ Թագ. ժբ. 12. դ Թագ. բ. 16. Գործ. ը. 39.
է Հմր 12. Գլ. ը. 3.
ն դ Թագ. գ. 15. Գլ. ա. 3. ը. 1. լէ. 1.
խ Յոբ. բ. 13. Սաղ. ճլէ. 1.
ծ Գլ. լգ. 7. 8. 9.
կ Եսա. ծբ. 8. ծզ. 10. Կր. 6. Երեմ. զ. 17.
հ Գլ. լգ. 6. Յով. ը. 21. 24.
ձ Եսա. խթ. 4. 5. Գործ. ի. 26.
ղ Գլ. ժր. 24. լգ. 12. 13.
ճ Հմր 14. Գլ. ա. 3.
մ Գլ. ր. 4.

23 խօսիմ։ Եւ ես ելայ՝ դաշտը գա-
ցի. և ահա՛ հոն կայներ էր յ Տէրոջը
փառքը, ն Քոբար գետին քովը տե-
սած փառքիս պէս. շ ու երեսիս
24 վրայ ինկայ։ Եւ ո Հոգին իմ վրաս
եկաւ, ու զիս ոտքի վրայ կայնե-
ցուց. և ինծի հետ խօսեցաւ, ու
ինծի ըսաւ. Գնա՛ տանդ մէջ պա-
25 հուըտէ՛։ Ու դուն որդի՛ մարդոյ՝
ահա՛ չ քու վրադ կապանքներ պիտի
դնեն, և անոնցմով քեզ պիտի կա-
պեն. ու անոնց մէջը պիտի չելլես։
26 Եւ պ քու լեզուդ քու քմացդ պի-
տի-փակցընեմ, ու համր պիտի ըլ-
լաս. և անոնց մէջը՝ յանդիմանող
մարդու պէս պիտի չըլլաս. Վասն
զի անոնք ապստամբներու տուն
27 են։ ռ Բայց երբոր ես քեզի հետ
խօսիմ, քու բերանդ պիտի բա-
նամ. ու անոնց պիտի ըսես. ս Տէր
Եհովան այսպէս կ'ըսէ. Լսողը
թող լսէ՛, ու զանց ընողը թող
զանց ընէ. Վասն զի անոնք ապըս-
տամբներու տուն են։

Ն. Ք. գ.Ե. 695

յ Գլ. ա. 28.
ն Գլ. ա. 1.
շ Գլ. ա. 28.
ո Գլ. բ. 2.
չ Գլ. դ. 8.
պ Գլ. իդ. 27. Ղուկ. ա. 20, 22.
ռ Գլ. բ. 5, 6, 7.
ս Գլ. իդ. 27. լգ. 22.
ս Հմր 11.
վ Հմր 9, 26. Գլ. ժբ. 2, 3.

## ԳԼ. Դ

1 Պաշարման օրինակով մը կը ցուցուի Երուսաղէմին կռապաշտութիւն հաստատելէն մինչև գերութեան ժամանակին միջոցը։ 9 Պաշարման ատենի պաշարին միջոցովը՝ սովին սաստկութիւնը կը ցուցուի։

1 Ու դուն որդի՛ մարդոյ՝ քեզի մէկ
աղիւս մը առ, ու զանիկայ
առջևդ դիր, և անոր վրան քաղաք
մը՝ այսինքն Երուսաղէմը գծագրէ՛։
2 Ու անոր բոլորտիքը պաշարում
դիր, և անոր դէմ մարտկոց շինէ,
ու անոր դէմ պատնէ՛շ կանգնէ,
և անոր դէմ բանակ կազմէ, ու
անոր բոլորտիքը տ *պատերազմա-
3 կան մեքենաներ՝ դիր։ Եւ դուն
քեզի երկաթէ տապակ մը առ, ու
զանիկայ՝ քուկին ու քաղաքին
մէջտեղը՝ երկաթէ պարիսպի տե-
ղ դիր, ու քու երեսդ անոր դէմ
շիտկէ՛, որ անիկայ պաշարուի. ու
զանիկայ պաշարէ՛. ց ասիկայ Իս-
րայէլի տանը նշան ըլլայ։
4 Եւ դուն քու ձախ կողմիդ վրայ
պառկէ՛, ու անոր վրայ դիր Իս-
րայէլի տանը անօրէնութիւնը. ա-
նոր վրայ պառկած օրերուդ թուո-
վը՝ անոնց անօրէնութիւնը կրես։
5 Քանզի ես անոնց անօրէնութեանը
տարիները օրերու թուով քու վը-
րադ դրի՝ իրեք հարիւր իննսուն օր,
որ փ Իսրայէլի տանը անօրէնու-
6 թիւնը կրես։ Ու երբոր ան օրերը
լմնցընես, նորէն պառկիս քու աջ
կողմիդ վրայ, ու քառսուն օր
Յուդայի տանը անօրէնութիւնը
կրես. քեզի ամէն մէկ տարիին տե-
ղը մէյմէկ օր տուի։

տ Գլ. իա. 22.
*Եբր. խոյեր
ց Գլ. ժբ. 6, 11. իդ. 24, 27.
Որ կը սկսի իրր 975 ա Թագ. ժբ. 23 և կը վերջանայ իրր 585
փ Թուոց. ժդ. 34.

Ն. Ք. ՉՃ. 595

Գլ. Գ. 25։

Ովս. Թ. 3։

Գործ. Ժ. 14։

Ել. ԻԲ. 31։ Ղեւ. Ժա. 40։ ԺԷ. 15։

Բ Օր. ԺԴ. 3։ Ես. ԿԵ. 4։

Ղեւ. ԻԶ. 26։ Սաղ. ՃԵ. 16։ Ես. Գ. 1։ Գլ. Ե. 16։ ԺԴ. 13։

Հմր 10։ Գլ. ԺԲ. 19։

Հմր 11։

Ղեւ. ԻԶ. 39։ Գլ. ԻԴ. 23։

7 Եւ քու երեսդ դէպ 'ի Երու-
սաղէմի պաշարումը շիտկես, ու
քու բազուկդ մերկացընես, ու ա-
նոր վրայ մարգարէութիւն ընես։
8 Եւ ես ահա քու վրադ կապանք-
ներ պիտի դնեմ, որ մէկ կողմէդ մէ-
կալ կողմդ չդառնաս, մինչեւ որ
քու պաշարման օրերդ լմնցընես։
9 Ու դուն քեզի ցորեն, գարի,
բակլայ, ոսպ, կորեակ, ու հաճար
առ, եւ զանոնք աման մը մէջ
դիր, ու անոնցմէ քեզի հաց շինէ.
զանիկայ՝ քու մէկ կողմիդ վրայ
պառկած օրերուդ համրանքովը՝ ի-
րեք հարիւր իննսուն օր ուտես։
10 Եւ ուտելու կերակուրդ կշռքով
ըլլայ, օրը քսան սիկղ. զանիկայ
11 ժամանակէ ժամանակ ուտես։ Եւ
ջուրը չափով՝ հիմենի մը վեցերորդ
մասը խմես. զանիկայ ժամանակէ
12 ժամանակ խմես։ Եւ ան գարի կէ-
րակուրը զարեղէն շօթերու պէս
շինելով ուտես. ու զանիկայ՝ անոնց
աչքերին առջեւը՝ մարդու աղբի վրայ
13 եփես։ Եւ Տէրը ըսաւ. Իսրա-
յէլի որդիքը այսպէս պղծութեամբ
պիտի ուտեն իրենց հացը ան ազ-
գերուն մէջ, ուր որ զանոնք պիտի
14 քշեմ։ Ու ես ըսի. ՈՀ, Տէր
Եհովայ՝ ահա իմ անձս չպղծուե-
ցաւ. եւ իմ տղայութենէս մինչեւ
հիմա մեռելոտի կամ գազանաբեկի
չկերայ. ու իմ բերանս պիղծ միս
15 չմտաւ։ Եւ ինծի ըսաւ. Նայէ՛,
քեզի մարդու աղբին տեղը՝ կովի
թակոր տուի, ու քու հացդ անոր
վրայ եփես։
16 Նաեւ ինծի ըսաւ. Որդի՛ մար-
դոյ՝ ահա ես Երուսաղէմի մէջ հա-
ցին ցուպը պիտի կոտրեմ, ու
հացը կշռքով եւ անձկութեամբ
պիտի ուտեն, ու ջուրը չափով եւ
17 ապշութեամբ պիտի խմեն։ Վասն
զի հացի ու ջուրի կարօտութիւն
պիտի քաշեն, ու իրարու նայելով
պիտի ապշին, ու իրենց անօրէնու-
թիւնովը պիտի հալին։

## ԳԼ. Ե

1 Մազ կտրելու օրինակով 5 կը ցուցուի Երու-
սաղէմի դատաստանը իր ապստամբութեանը
համար, 12 սովով, սուրով, ու ցիրուցան
ըլլալով։

594

Տես. Ղեւ. ԻԱ. 5։ Ես. Է. 20։ Գլ. ԽԴ. 20։

Հմր 12։

Գլ. Դ. 1։

Գլ. Դ. 8, 9։

1 Ու դուն որդի՛ մարդոյ՝ քեզի սուր
դանակ մը առ, քեզի սափրիչի
ածելի՛ մը առ, եւ զանիկայ գլխուդ
վրայէն, ու մօրուքիդ վրայէն անց-
ցուր. եւ քեզի կշիռք մը առ, ու
2 մազերը բաժին բաժին ըրէ։ Եր-
րորդ մասը՝ քաղաքին մէջը կրակով
այրես, երբոր պաշարման օրերը
լմըննան. ու երրորդ մասը առնես,
եւ դանակով զարնես անոր բոլոր-
տիքը. ու երրորդ մասը հովին
ցրուես. ու ես անոնց ետեւէն սուր
3 պիտի քաշեմ։ Եւ անոնցմէ քիչ
թուով առնես, ու զանոնք քու
4 ղանցքներուդ մէջը ծրարես։ Եւ
դարձեալ անոնցմէ առնես, ու զա-
նոնք կրակը նետես, եւ զանոնք կրա-
կով այրես. անկէ բոլոր Իսրայէլի
տանը կրակ պիտի ելլէ։
5 Տէր Եհովան այսպէս կ'ըսէ. Ա-
սիկայ Երուսաղէմն է. զանիկայ
ազգերուն մէջը, ու իր բոլորտիքը
6 եղող երկիրներուն մէջը դրի։ Եւ
անիկայ իմ *դատաստաններս՝ ազ-
գերէն, ու իմ կանոններս՝ իր բո-
լորտիքը եղող երկիրներէն աւելի
ամբարշտութեան փոխեց". վասն
զի իմ դատաստաններս մերժեցին,
7 եւ իմ կանոններովս չքալեցին։ Ա-
նոր համար Տէր Եհովան այսպէս
կ'ըսէ. Որովհետեւ ձեր բոլորտիքը
եղող ազգերէն աւելի †ապստամբ
եղաք, իմ կանոններովս չքալեցիք,
եւ իմ դատաստաններս 'ի գործ չը-
դրիք. ոչ ալ ձեր բոլորտիքը եղող
հեթանոսներուն սովորութեանը
8 համեմատ ըրիք. Անոր համար Տէր
Եհովան այսպէս կ'ըսէ. Ահա ես
քեզի դէմ եմ. ու ազգաց աչքե-
րուն առջեւ քու մէջդ դատաստան-
9 ներ 'ի գործ պիտի դնեմ։ Եւ քու
բոլոր պղծութիւններուդ համար՝
անանկ բան մը պիտի ընեմ քու
մէջդ, որուն նմանը ոչ բրած եմ,
10 ոչ ալ պիտի ընեմ։ Անոր համար
քու մէջդ հայրերը իրենց տղաքը
պիտի ուտեն, ու տղաքը իրենց
հայրերը պիտի ուտեն. եւ քու մէջդ
դատաստաններ 'ի գործ պիտի դը-
նեմ, ու քու բոլոր մնացորդդ ա-
11 մէն հովի պիտի ցրուեմ։ Անոր
համար ես կենդանի եմ՝ կ'ըսէ Տէր
Եհովան, որովհետեւ դուն քու բո-
լոր զարշութիւններովդ, ու բոլոր
պղծութիւններովդ իմ սրբարանս
պղծեցիր, ես ալ անշուշտ քեզ պի-
տի կոտրեմ. Եւ իմ աչքս պիտի
12 չխնայէ, ու պիտի չողորմիմ։ Քու
երրորդ մասդ ժանտախտով պիտի
մեռնին, եւ քու մէջդ սովով պիտի
սպառին. եւ քու երրորդ մասդ չորս
կողմդ սրով պիտի իյնան. ու եր-
րորդ մասդ ամէն հովի պիտի ցը-
րուեմ, ու անոնց ետեւէն սուր
13 պիտի քաշեմ։ Այսպէս իմ բար-
կութիւնս պիտի կատարուի, եւ
իմ սրտմտութիւնս անոնց վրայ
պիտի իջեցընեմ, ու վրէժ պիտի
առնեմ. ու երբոր իմ սրտմտու-
թիւնս անոնց վրայ կատարեմ,
պիտի գիտնան թէ ես Տէրս՝ իմ
14 նախանձովս խօսեցայ։ Եւ ամէն
անցնողին աչքերուն առջեւը՝ քու

Ն. Ք. ՉՃ. 594

Երեմ. Խ. 6։ ԽԲ. 16։

Երեմ. Խա. 1, 2, ԽԴ. 14։

* Կամ՝ դատաստաններուս՝ ազգերէն, ու իմ կանոններուս՝ իր բոլորտիքը եղող երկիրներէն աւելի ամբարշտութեամբ դէմ կեցաւ.

† Կամ՝ խըռովեցաք

Երեմ. Բ. 10, 11։ Գլ. ԺԶ. 47

Ողբ. Դ. 6։ Դան. Թ. 12։ Ամով. Գ. 2։

Ղեւ. ԻԶ. 29։ Բ Օր. ԻԸ. 53։ Դ Թագ. Զ. 29։ Երեմ. ԺԹ. 9։ Ողբ. Բ. 20։ Դ. 10։

Հմր 12։ Ղեւ. ԻԶ. 33։ Բ Օր. ԻԸ. 64։ Գլ. ԺԲ. 14։ Զաք. Բ. 6։

Գլ. Ժա. 21։

Բ Մն. ԼԶ. 14։ Գլ. Ը. 5, Զ։ ԻԳ. 38։

Գլ. Է. 4, 9։ Ը. 18։ Թ. 10։

Յես. Հմր 2։ Երեմ. ԺԵ. 2։ ԻԱ. 9։ Գլ. Զ. 12։

Երեմ. Թ. 16։ Հմր 2, 10։ Գլ. Զ. 8։

Ղեւ. ԻԶ. 33։ Հմր 2։ Գլ. ԺԲ. 14։

Ողբ. Դ. 11։ Գլ. Զ. 12։ Ե. 8։

Գլ. Իա. 17։

Ես. Ա. 24։

Գլ. ԼԶ. 6։ ԼԸ. 19։

Ն. Ք. Ղ. 594

յ Ղև. իզ. 31, 32. Նեեմ. բ. 17.
ն Գլ. իե. 17.
ր Օր. իը. 37. գ Թագ. թ. 7. Սաղ. հթ. 4. Երեմ. իդ. 9. Ողբ. բ. 15.
ս Բ Օր. լբ. 23, 24.
չ Ղև. իզ. 26. Գլ. դ. 16. ժդ. 13.
պ Ղև. իզ. 22. Բ Օր. լբ. 24. Գլ. ժդ. 21. լգ. 27. լդ. 25.
ջ Գլ. լը. 22.

բոլորտիքդ եղող ազգերուն մէջը՝
յաւերման ու անարգութեան պի-
15 տի մատնեմ քեզ ։ Ու երբոր բար-
կութեամբ , և սրտմտութեամբ ,
ու սրտմտութեան պատիժներով
քու վրադ դատաստաններ 'ի գործ
դնեմ , քու բոլորտիքդ
եղող ազգերուն մէջը՝ անարգանք ,
նախատինք , առակ ու զարմացում
պիտի ըլլաս . ես Տէրս խօսեցայ ։
16 Երբոր ես սովուն չար ու ապակա-
նիչ նետերը խրկեմ , որոնք ձեզ ա-
պականելու համար պիտի խրկեմ ,
սովը ձեր վրայ պիտի աւելցնեմ .
ու ձեզի համար հացին ցուպը պի-
17 տի կոտրեմ ։ Այսպէս ձեր վրայ
սով ու չար գազաններ պիտի
խրկեմ . ու քեզ անզաւակ պիտի
թողուն . և քու մէջէդ ժանտախտ
ու արիւն պիտի անցնի . ու քու
վրադ սուր պիտի բերեմ . ես Տէրս
խօսեցայ ։

## ԳԼ. Զ

1 Իսրայէլի դատաստանը իրենց կռապաշտութեանը համար ։ 8 Մէկ մնացորդ մը պիտի պահուի ։ 11 Արդարները յորդորուած են անոնց թշուառութիւններուն վրայ ողբալու ։

1 Ու Տէրոջը խօսքը ինծի եղաւ՝ ը-
2 սելով . Որդի մարդոյ՝ երեսդ
Իսրայէլի լեռներուն դարձուր , ու
3 անոնց մարգարէութիւն ըրէ , Ու
ըսէ . Ո՛վ Իսրայէլի լեռներ՝ Տէր
Եհովային խօսքը մտիկ ըրէք . այս-
պէս կ'ըսէ Եհովայ Տէրը՝ լեռնե-
րուն , բլուրներուն , ձորերուն ու
հովիտներուն . Ահա ես ձեր վրայ
սուր պիտի բերեմ , ու ձեր բարձր
4 տեղուանքը պիտի կործանեմ . Եւ
ձեր սեղանները աւերակ պիտի մը-
նան , ու ձեր արեգական կուռքերը
պիտի կոտրտին . և ձեզմէ սպան-
նուածները ձեր կուռքերուն առջեւը
5 ինկած պիտի ձգեմ ։ Ու Իսրայէլի
որդւոցը դիակունքը իրենց կուռ-
քերուն առջեւը պիտի դնեմ , և ձեր
ոսկորները ձեր սեղաններուն բո-
6 լորտիքը պիտի ցրուեմ ։ Ձեր ամէն
բնակած տեղերուն մէջ քաղաքնե-
րը աւերակ պիտի ըլլան , ու բարձր
տեղուանքը ամայի պիտի ըլլան .
որպէս զի ձեր սեղանները աւերակ
ու ամայի ըլլան , և ձեր կուռքերը
կոտրտին ու խափանուին , և ձեր
արեգական կուռքերը կործանին ,
7 ու ձեր գործքերը ջնջուին ։ Ու ձեր
մէջը սպաննուածներ պիտի իյ-
նան . և պիտի գիտնաք թէ ես եմ
Տէրը ։
8 Բայց երբոր դուք երկիրներու
մէջ ցրուիք , ձեզմէ սուրէն ա-
զատուածները՝ ազգերուն մէջ մը-
9 նացորդ պիտի թողում ։ Եւ ձեր
ազատուածները զիս պիտի յիշեն

ա Գլ. ի. 46. իա. 2. իե. 2.
բ Գլ. լզ. 1.
գ Ղև. իզ. 30.
դ Ղև. իզ. 30.
ե Հմր 13. Գլ. է. 4. 9. ժա. 10. 12. ժբ. 15.
զ Երեմ. իդ. 28. Գլ. ե. 2. 12. ժբ. 16. ժգ. 22.

ան ազգերուն մէջը , ուր որ գերի
պիտի քշուին . * վասն զի իրենց
շնացող ու ինծմէ խոտորած սըր-
տովը , ու իրենց կուռքերուն ե-
տեւէն պոռնկութիւն ընող աչքե-
րովը տանջուեցայ" . և անոնք ի-
րենց բոլոր պղծութիւններուն հա-
մեմատ ըրած չարութիւններնուն
պատճառովը իրենց անձերէն պիտի
10 զզուին ։ Ու պիտի գիտնան թէ ես
Տէրս պարապ տեղը չխօսեցայ՝ թէ
աս չարիքը անոնց պիտի ընեմ ։
11 Տէր Եհովան այսպէս կ'ըսէ . Ձեռ-
քերդ իրարու զարկ , ու ոտքդ գե-
տինը զարկ , ու ըսէ . Ափսո՜ս Իս-
րայէլի տանը բոլոր չար պղծու-
թիւններուն . վասն զի սրով , սո-
վով ու ժանտախտով պիտի իյ-
12 նան ։ Հեռուն եղողը՝ ժանտախ-
տով պիտի մեռնի , ու մօտ եղողը՝
սրով պիտի իյնայ , և մնացածը ու
† պաշարման մէջ եղողը" սովով
պիտի մեռնի . այսպէս իմ սրտ-
մտութիւնս անոնց վրայ պիտի
13 կատարեմ ։ Ու երբոր անոնց ըս-
պաննուածները՝ իրենց կուռքերուն
մէջտեղը՝ իրենց սեղաններուն բո-
լորտիքը , ամէն բարձր բլուրի վը-
րայ , ամէն լեռներու գլուխ , ու
ամէն կանանչ ծառի տակ , և ա-
մէն տերեւախիտ բեւեկնիի տակ փը-
ռուած ըլլան , ուր որ անոնք իրենց
բոլոր կուռքերուն անուշ հոտ կը
մատուցանէին , պիտի գիտնաք
14 թէ ես եմ Տէրը ։ Այսպէս իմ
ձեռքս անոնց վրայ պիտի երկըն-
ցընեմ . ու երկիրը՝ այսինքն անոնց
բոլոր բնակած տեղուանքը Դեբ-
լայի կողմը եղող անապատէն ա-
ւելի ամայի ու աւերակ պիտի ը-
նեմ . ու պիտի գիտնան թէ ես
եմ Տէրը ։

## ԳԼ. Է

1 Իսրայէլի վերջին ամայութիւնը ։ 16 Ազատուածներուն սուգը ։ 20 Թշնամիները պիտի պղծեն սրբարանը՝ Իսրայէլացւոց գարշութիւններուն համար ։ 23 Շղթայի մը օրինակով կը ցուցուի անոնց ողորմելի գերութիւնը ։

1 Ու Տէրոջը խօսքը ինծի եղաւ՝ ը-
2 սելով . Ու դուն որդի մարդոյ՝
մտի՛կ ըրէ . Տէր Եհովան Իսրայէլի
երկրին այսպէս կ'ըսէ . Վախճան՝
երկրին չորս կողմին վախճանը հա-
3 սեր է ։ Հիմա քու վրադ վախճան
կու գայ . ու իմ բարկութիւնս
քու վրադ պիտի խրկեմ . և քու
ճամբաներուդ համեմատ քեզի դա-
տաստան պիտի ընեմ , և քու բոլոր
պղծութիւններդ քու վրադ պիտի
4 բերեմ ։ Եւ իմ աչքս քեզի պիտի
չխնայէ , ու պիտի չողորմիմ . հա-
պա քու ճամբաներդ քու վրադ

Ն. Ք. Ղ. 594

* Կամ՝ երբոր կոտրեմ իրենց շնացող ու ինծմէ խոտորած սիրտը, ու իրենց կուռքերուն ետեւէն պոռնկութիւն ընող աչքերը .
է Սաղ. ղր. 40. Ես. է. 13. Խգ. 24. Կգ. 10.
ը Թուոց. ժե. 39. Գլ. ի. 7, 24.
թ Ղև. իզ. 39. Յոբ. խբ. 6. Գլ. ի. 43. լզ. 31.
ժ Գլ. իա. 14.
ի Գլ. ե. 12.
† Կամ՝ պաշարուած
լ Գլ. ե. 13.
խ Երեմ. բ. 20.
ծ Ովս. դ. 13.
կ Ես. ծէ. 5.
հ Հմր 7.
ձ Ես. ե. 25.
ղ Թուոց. լգ. 46. Երեմ. խը. 22.

ա Հմր 3. 6. Ամով. ը. 2. Մատ. իդ. 6. 13. 14.
բ Հմր 8. 9.
գ Հմր 9. Գլ. ե. 11. ը. 18. թ. 10.

պիտի դնեմ . և քու պղծութիւն-
ներդ քու մէջդ պիտի ըլլան . Ու
պիտի գիտնաք թէ ես եմ Տէրը ։
5 Տէր Եհովան այսպէս կ՚ըսէ .
Չարիք մը՝ անհամ մէկ չարիք մը կու
6 գայ ։ Վախճանը կու գայ , վախ-
ճանը կու գայ . քու վրադ արթըն-
7 ցաւ . ահա կու գայ ։ Ո՛վ երկ-
րին բնակիչը՝ կարգը քեզի կու
գայ . ժամանակը կու գայ . խռո-
վութեան օրը մօտեցաւ , և ոչ թէ
8 լերանց ցնծութիւնը ։ Հիմա մօ-
տերս՝ իմ սրտմտութիւնս քու
վրադ պիտի թափեմ , և իմ բար-
կութիւնս քու վրադ պիտի կատա-
րեմ , Ու քու ճամբաներուդ հա-
մեմատ՝ քեզի դատաստան պիտի ը-
նեմ , և քու բոլոր պղծութիւններդ
9 քու վրադ պիտի բերեմ ։ Ու իմ
աչքս պիտի չխնայէ , ու պիտի չո-
ղորմիմ . քու ճամբաներուդ համե-
մատ քեզի հատուցում պիտի ընեմ .
և քու պղծութիւններդ քու մէջդ
պիտի ըլլան . Ու պիտի գիտնաք
թէ ես եմ Տէրը՝ որ կը զարնեմ ։
10 Ահա օրը՝ ահա կու գայ . կարգը
ելեր հասաւ . գաւազանը ծաղկե-
ցաւ . ամբարտաւանութիւնը ըն-
11 ձիւղեցաւ ։ Բռնաւորութիւնը ե-
լաւ , ամբարշտութեան գաւազան
եղաւ . անոնցմէ մարդ պիտի չմնայ .
ու անոնց բազմութենէն ու ստա-
ցուածքէն բան մը պիտի չմնայ , և
անոնց մէջը *վայելչութիւն պիտի
12 չըլլայ ։ Ժամանակը եկաւ . օրը
մօտեցաւ . գնողը չուրախանայ , ու
ծախողը չողբայ . քանզի անոր բո-
լոր բազմութեանը վրայ բարկու-
13 թիւն կայ ։ Ինչու որ ծախողը՝
ծախուածին պիտի չդառնայ , թէև
ողջ ըլլան . վասն զի անոր բոլոր
բազմութեանը համար եղած տե-
սիլքը ետ պիտի չդառնայ . ու
մարդ մը իր կենացը անօրէնու-
թեամբը պիտի չուժովնայ ։
14 Փողը հնչեցուցին . ամէն բան
պատրաստեցին . բայց պատերազ-
մի գացող չկայ . վասն զի իմ բար-
կութիւնս անոր բոլոր բազմու-
15 թեանը վրայ է ։ Դուրսէն սուր ,
ու ներսէն ժանտախտ ու սով պիտի
ըլլայ . դաշտը եղողը՝ սրով պիտի
մեռնի , ու քաղաքին մէջ եղողը՝
սովը ու ժանտախտը պիտի ուտէ ։
16 Եւ անոնց ազատուածները՝ որ
պիտի ազատին , լեռներուն վրայ՝
ձորերու աղաւնիներուն պէս պիտի
ըլլան . ամէնքը պիտի հեծեն , ամէն
մէկը իր անօրէնութեանը համար ։
17 Ամէն ձեռքերը պիտի թուլնան ,
ու ամէն ծունկերը ջուրի պէս պիտի
18 հալին ։ Եւ անոնք քուրձեր պիտի
հագնին . ու զանոնք սոսկումը

Ն · Ք · ԴԲ · 594
Հմր 27 ։ Գլ · գ · 7 ։ ժբ · 20 ։
Հմր 10 ։
Հմր 12 ։ Սոփ · ա · 14 · 15 ։
Գլ · ի · 8 · 21 ։
Հմր 3 ։
Հմր 4 ։
Հմր 4 ։
Հմր 7 ։
Երեմ · զ · 7 ։
* Կամ՝ սուգ
Հմր 7 ։
Բ Օր · լբ · 25 ։ Ողբ · ա · 20 ։ Գլ · ե · 12 ։
Գլ · զ · 8 ։
Եսա · ժգ · 7 ։ Երեմ · զ · 24 ։ Գլ · իա · 7 ։
Եսա · գ · 24 ։ ժե · 2 · 3 ։ Երեմ · խը · 37 ։ Ամով · ը · 10 ։
Սաղ · ծա · 5 ։

պիտի ծածկէ . ու ամէն երեսի վրայ՝
ամօթ , և անոնց ամէն գլխուն վրայ՝
19 կնտութիւն պիտի ըլլայ ։ Իրենց
արծաթը փողոցներուն մէջ պիտի
նետեն . ու անոնց ոսկին անարգ
բան մը պիտի սեպուի . անոնց ար-
ծաթը ու ոսկին Տէրոջը բարկու-
թեան օրը՝ կարող պիտի չըլլայ
զանոնք ազատելու . անով պիտի
չկրնան իրենց անձը կշտացընել ,
ոչ ալ իրենց փորը լեցընել . վասն
զի անիկայ իրենց անօրէնութեա-
20 նը գայթակղութիւնը եղաւ ։ †Ա-
նոր զարդերուն փառքը՝ հպարտու-
թեան դարձուցին . և անով իրենց
գարշութիւնները՝ իրենց պղծու-
թիւններուն պատկերները շինեցին .
աս պատճառաւ անոնց առջևը ա-
նարգ բան մը կ՚ընեմ զանիկայ .
21 Եւ զանիկայ օտարներուն ձեռքը
պիտի տամ՝ որ յափշտակեն , ու
երկրի ամբարիշտներուն՝ որ զանի-
կայ թալլեն . ու զանիկայ պիտի
22 պղծեն ։ Եւ իմ երեսս անոնցմէ
պիտի դարձընեմ . ու իմ գաղտնի
տեղս պիտի պղծեն . և հոն բռնա-
ւորներ պիտի մտնեն , ու զանիկայ
պիտի պղծեն ։
23 Մէկ շղթայ մը շինէ . վասն զի
երկիրը արեան դատաստանով լե-
ցուեցաւ . ու քաղաքը բռնու-
24 թիւնով լեցուեցաւ ։ Եւ ազգե-
րուն խիստ չարերը պիտի բերեմ .
ու անոնց տուները պիտի ժառան-
գեն . և բռնաւորներուն ամբար-
տաւանութիւնը պիտի դադրեցը-
նեմ . ու անոնց սուրբ տեղերը պի-
25 տի պղծուին ։ Կործանումը կու
գայ . ու խաղաղութիւն պիտի
փնտռեն , բայց պիտի չգտնուի ։
26 Պատուհասի վրայ պատուհաս պի-
տի գայ , և գուժի վրայ գոյժ պիտի
ըլլայ . ու մարգարէէն տեսիլք պի-
տի ուզեն . և քահանայէն օրէնքը՝
ու ծերերէն խորհուրդը պիտի կոր-
27 սուի ։ Թագաւորը սուգ պիտի
բռնէ , ու իշխանը սոսկում պիտի
հագնի . ու երկրին ժողովուրդին
ձեռքերը վախով պիտի թուլնան .
անոնց ճամբաներուն համեմատ ա-
նոնց հատուցում պիտի ընեմ , և
անոնց դատաստաններուն համե-
մատ զանոնք պիտի դատեմ , Ու
պիտի գիտնան թէ ես եմ Տէրը ։

Ն · Ք · ԴԲ · 594
Առակ · ժա · 4 ։ Սոփ · ա · 18 ։
Գլ · ժդ · 3 · 4 ։ խդ · 12 ։
† Կամ՝ Իրենց
Երեմ · է · 30 ։
Դ Թագ · իա · 16 ։ Գլ · թ · 9 ։ ժա · 6 ։
Բ Օր · լբ · 23 ։ Երեմ · դ · 20 ։
Սաղ · հդ · 9 ։ Ողբ · բ · 9 ։ Գլ · ի · 1 · 8 ։
Հմր 4 ։

## ԳԼ · Ը

1 Երուսաղէմի մէջ աստուածային տեսիլքով կը ցուցուի Եզեկիէլին՝ 5 Նախանձու կուռքը , 7 պատկերներու տունը , 18 Թամուզին համար սուգ ընողները , 15 արեգակին երկրպագութիւն ընողները ։ 18 Աստուծոյ բարկութիւնը անոնց կռապաշտութեանը համար ։

1 Ու եղաւ որ վեցերորդ տարին՝ վե-
ցերորդ ամսուն հինգերորդ օրը՝

Ն. Ք. ՉԺ.
594

Ես իմ տանս մէջ կը նստէի, և
Յուդայի ծերերը իմ առջևս կը
նստէին. ու հոն Տէր Եհովային
2 ձեռքը իմ վրաս ինկաւ. Ու նա-
յեցայ, ու ահա մարդու կերպարանք
մը կար՝ կրակի երևոյթով. անոր
երիկամանցը երևոյթէն վար՝ կրակ
էր, ու անոր երիկամունքներէն
վեր՝ ոսկեպղինձի նման փայլուն
3 երևոյթ մը կար։ Եւ անիկայ ձեռ-
քի նմանութիւն մը երկնցուց,
ու իմ գլխուս վարսերէն բռնեց. ու
Հոգին զիս երկրի ու երկինքի մէջ-
տեղը վերցուց, և զիս Աստուծոյ
տեսիլքով Երուսաղէմ՝ դէպ 'ի հիւ-
սիս նայող ներքին դրանը մուտքը
բերաւ, հոն որ նախանձ գրգռող
4 նախանձու կուռքը կը կենար։ Եւ
ահա հոն՝ դաշտի մէջ տեսած տե-
սիլքիս պէս՝ Իսրայէլի Աստուծոյն
փառքը կար։
5 Ու ինծի ըսաւ. Որդի՛ մարդոյ՝
հիմա քու աչքերդ դէպ 'ի հիւսիս
վերցուր. ու երբոր աչքերս դէպ 'ի
հիւսիս վերցուցի, ահա սեղանին
դրանը մուտքին հիւսիսային կողմը
6 աս նախանձու կուռքը կար։ Ան
ատենը ինծի ըսաւ. Որդի՛ մարդոյ՝
կը տեսնե՞ս ասոնց ըրածը՝ ան մեծ
պղծութիւնները որ Իսրայէլի տու-
նը հոս կ'ընէ, որպէս զի ես իմ
սրբարանէս հեռանամ. բայց նո-
րէն դարձիր, ու աւելի մեծ պղծու-
թիւններ պիտի տեսնես։
7 Եւ զիս գաւիթին դուռը տա-
րաւ. ու տեսայ, և ահա պատին
8 վրայ մէկ ծակ մը կար։ Ու ինծի
ըսաւ. Որդի՛ մարդոյ՝ հիմա աս
պատը փորէ. ու երբոր պատը
փորեցի, ահա մէկ դուռ մը կար։
9 Եւ ինծի ըսաւ. Մտիր, ու տես
ան չար պղծութիւնները՝ որ անոնք
10 հոս կ'ընեն։ Ու ես մտայ, ու
տեսայ, և ահա ամէն տեսակ սո-
ղուններու ու գարշելի անասուննե-
րու պատկերներ՝ և Իսրայէլի տանը
բոլոր կուռքերը պատին վրայ չոր-
11 ջանակի փորուած էր։ Ու անոնց
առջևը կայնած էին Իսրայէլի տա-
նը ծերերէն եօթանասուն մարդ,
և Սափանի որդին Յեզոնիան ալ
անոնց մէջը կայնած էր. ամէն մէկը
ձեռքը բուրվառ ունէր. ու խուն-
կին ծուխը ամպի պէս վեր կ'ելլէր։
12 Եւ Տէրը ինծի ըսաւ. Որդի՛ մար-
դոյ՝ կը տեսնե՞ս թէ ինչե՛ր կ'ընեն
Իսրայէլի տանը ծերերը մութ տեղը՝
ամէն մարդ իր ծածուկ պատկերա-
տանը մէջ. վասն զի անոնք կ'ըսեն
թէ՝ Տէրը մեզ չտեսներ. Տէրը եր-
13 կիրը թողուց։ Ու ինծի ըսաւ. Նո-
րէն դարձիր, և անոնց ըրած աւելի
մեծ պղծութիւնները պիտի տեսնես։

ա Գլ. ժդ. 1։ ի. 1։ լգ. 31։
բ Գլ. ա. 3։ գ. 22։
գ Գլ. ա. 26, 27։
դ Գլ. ա. 4։
ե Դան. ե. 5։
զ Գլ. գ. 14։
է Գլ. ժա. 1, 24։ խ. 2։
ը Երեմ. է. 30։ լբ. 34։ Գլ. ե. 11։
թ Բ Օր. լբ. 16, 21։
ժ Գլ. ա. 28։ գ. 22, 23։
ի Գլ. թ. 9։

14 Ու զիս Տէրոջը տանը դէպ 'ի
հիւսիս եղող դրանը մուտքը բե-
րաւ. և ահա հոն Թամուզին համար
15 լացող կիները կը նստէին։ Ու
ինծի ըսաւ. Որդի՛ մարդոյ՝ կը
տեսնե՞ս. նորէն դարձիր, ալ ա-
սոնցմէ աւելի մեծ պղծութիւններ
պիտի տեսնես։
16 Եւ զիս Տէրոջը տանը ներքին
գաւիթը բերաւ. և ահա Տէրոջը
տաճարին դուռը՝ նրահին ու սե-
ղանին մէջտեղը՝ քսանուհինգ մար-
դու չափ կային. անոնք թիկունք-
նին Տէրոջը տաճարին դարձուցեր
էին, ու երեսնին արևելքին, ու
դէպ 'ի արևելք՝ արևուն երկրպա-
17 գութիւն կ'ընէին։ Եւ ինծի ըսաւ.
Որդի՛ մարդոյ՝ տեսա՞ր. միթէ Յու-
դայի տանը պզտիկ բան կ'երևնայ
իրենց հոս ըրած պղծութիւնները
ընելը, որ երկիրն ալ բռնութիւ-
նով լեցուցին, ու զիս բարկացընե-
լու դարձան. և ահա ճիւղը իրենց
18 քիթին կ'երկընցընեն։ Ու ես ալ
սրտմտութեամբ պիտի վարուիմ
անոնց հետ. աչքս պիտի չխնայէ,
ու պիտի չողորմիմ. և անոնք իմ
ականջներուս մեծ ձայնով պիտի
կանչեն, սակայն անոնց մտիկ պի-
տի չընեմ։

Ն. Ք. ՉԺ.
594

ա Յովէլ. բ. 17։
բ Գլ. ժա. 1։
գ Երեմ. բ. 27։ լբ. 33։
դ Բ Օր. դ. 19։ Դ Թագ. իգ. 5, 11։ Յոբ. լա. 26։ Երեմ. խդ. 17։
ե Գլ. թ. 9։
զ Գլ. ե. 13։ ժզ. 42։ իդ. 13։
է Գլ. ե. 11։ է. 4, 9։ թ. 5, 10։
ը Առակ. ա. 28։ Եսա. ա. 15։ Երեմ. ժա. 11։ ժդ. 12։ Միք. գ. 4։ Զաք. է. 13։

## ԳԼ. Թ

1 Մէկ տեսիլքի մը միջոցով կը ցուցուի թէ ո-
մանք պիտի փրկուէին, 5 և մնացածները պի-
տի կորսուէին. 8 և թէ Աստուած անոնց հա-
մար աղաչանք պիտի չընդունէր։

1 Եւ մեծ ձայնով կանչեց իմ ա-
կանջներուս, ու ըսաւ. Քա-
ղաքին վրայ որոշուածները մօտե-
ցուցէք, ու ամէն մէկը իր ապա-
կանիչ գործիքը իր ձեռքը առնէ-
2 լով։ Եւ ահա դէպ 'ի հիւսիս նա-
յող վերի դրանը ճամբայէն վեց
մարդ կու գար. ու ամէն մէկուն
կոտորիչ գործիքը իր ձեռքին էր.
և անոնց մէջը կտաւէ զգեստ հա-
գած մարդ մը կար, ու մէջքը դրա-
գիրի կաղամար ունէր. և անոնք
գացին պղնձէ սեղանին քովը կայ-
3 նեցան։ Ու Իսրայէլի Աստու-
ծոյն փառքը՝ որ քերովբէներուն
վրան էր, անոնց վրայէն տանը սե-
մը ելաւ։
Եւ ան կտաւէ զգեստ հագած,
ու մէջքը դրագիրի կաղամար ու-
4 նեցող մարդը կանչեց. Եւ Տէրը
անոր ըսաւ. Քաղաքին մէջէն՝ Ե-
րուսաղէմին մէջէն անցիր, ու անոր
մէջը եղած բոլոր պղծութիւննե-
րուն համար հառաչող ու ողբա-
ցող մարդոցը ճակատներուն վրայ
5 նշան դիր։ Ու քանի որ ես կը
լսէի՝ միւսներուն ըսաւ. Անոր ե-

Իրր 594

ա Ղև. ժզ. 4։ Գլ. ժ. 2, 6, 7։ Յայտ. ժե. 6։
բ Տես Գլ. գ. 23։ ը. 4։ ժ. 4, 18։ ժա. 22, 23։
գ Սաղ. ճժթ. 53, 136։ Երեմ. ժգ. 17։ Բ Կոր. ժբ. 21։ Բ Պետ. բ. 8։
դ Ել. ժբ. 7։ Յայտ. է. 3։ թ. 4։ Տես Յայտ. ժգ. 16, 17։ ի. 4։

Ն. Ք. Գ.
իբր 594

ե Հմր 10 ։ Գլ. Ե. 11 ։
զ Բ Մն. ԼԶ. 17 ։
է Յայտ. Թ. 4 ։
ը Երեմ. ԻԵ. 29 ։ Ապեա. Դ. 17 ։
թ Գլ. Ը. 11, 12, 16 ։
ժ Թուոց ԺԴ. 5 ։ ԺԶ. 4, 22, 45 ։ Յես. Է. 6 ։
ի Գլ. ԺԱ. 13 ։
լ Դ Թագ. ԻԱ. 16 ։ Գլ. Ը. 17 ։
խ Գլ. Ը. 12 ։
ծ Սաղ. Ժ. 11 ։ Եսա. ԻԹ. 15 ։
կ Գլ. Ե. 11 ։ Է. 4 ։ Ը. 18 ։
հ Գլ. ԺԱ. 21 ։

տէն քաղաքէն անցէ՛ք , ու զար-
կէ՛ք . ե աչքերնիդ չխնայէ , ու մի՛
6 ողորմիք . զԾերը , երիտասարդը
ու կոյսը , պզտիկ տղաքը ու կնիկ-
ները սպաննեցէ՛ք ու կորսնցու-
ցէ՛ք . բայց է վրան նշան ունեցող
մարդու մը ամենևին մի՛ մօտենաք .
ու ըիմ սրբարանէս սկսեցէք ։
թՈւստի տանը առջևը եղող ծեր
7 մարդիկներէն սկսան ։ Եւ անոնց
ըսաւ . Տունը պղծեցէք , ու գա-
ւիթները մեռելներով լեցուցէք ու
ելէ՛ք ։ Եւ անոնք ելան ու քա-
ղաքին մէջը զարկին ։
8 Ու երբոր զանոնք զարկին , ու ես
մնացի , ան ատենը ժերեսիս վրայ
ինկայ , և աղաղակելով ըսի . իՈ՜Հ
Տէր Եհովայ՝ դուն Երուսաղէմի վը-
րայ քու բարկութիւնդ թափելով՝
Իսրայէլի բոլոր մնացորդը բնա-
9 ջի՞նջ պիտի ընես ։ Ու ինծի ը-
սաւ . Իսրայէլի և Յուդայի տանը
անօրէնութիւնը խիստ շատ մեծ
է . ու լերկիրը արիւնով լեցուե-
ցաւ , և քաղաքը անիրաւութեամբ
լեցուեցաւ . վասն զի ըսին . խՏէ-
րը երկիրը թողուց , ու ծՏէրը
10 չտեսներ ։ Եւ հիմա իմ կաչքս
ալ պիտի չխնայէ , ու պիտի չո-
ղորմիմ . հիրենց ճամբաները՝ ի-
րենց գլուխը պիտի բերեմ ։
11 Եւ ահա կտաւէ զգեստ հագած ,
ու մէջքը կաղամար ունեցող մարդը
լուր բերաւ՝ ու ըսաւ . Ինծի հրա-
մայածիդ պէս ըրի ։

## ԳԼ. Ժ

1 Մարգարէն տեսիլքի մէջ կը տեսնէ քաղաքին վրայ ցանուելու կրակի կայծերը ։ 8 Քերովբէներուն տեսիլքը ։

ա Գլ. Ա. 22, 26 ։
բ Գլ. Թ. 2, 3 ։
գ Գլ. Ա. 13 ։
դ Տես Յայտ. Ը. 5 ։
ե Տես Հմր 18 ։ Գլ. Ա. 28 ։ Թ. 3 ։
զ Գ Թագ. Ը. 10, 11 ։ Գլ. ԽԳ. 5 ։
է Գլ. Ա. 24 ։
ը Սաղ. ԻԹ. 3, [illegible] ։

1 Եւ տեսայ որ ահա քերովբէներուն
գլխուն վրայի ահաստատու-
թեանը մէջ՝ շափիւղայ քարի պէս
աթոռի ձևով նմանութիւն մը
2 կ'երևնար անոնց վրայ ։ բՈւ կտա-
ւէ զգեստ հագած մարդուն խօսե-
ցաւ , ու ըսաւ . Քերովբէներուն
տակը եղող անիւներուն մէջտեղը
մտի՛ր , և ձեռքերդ քերովբէներուն
մէջտեղը եղող գկրակի կայծերէն
լեցուր , ու դքաղաքին վրայ ցա-
նէ . և անիկայ իմ աչքերուս առ-
3 ջևը մտաւ ։ Ու երբոր ան մարդը
մտաւ , քերովբէները տանը աջ
կողմը կայներ էին . և ամպը ներքին
4 գաւիթը լեցուցեր էր ։ եՈւ Տէ-
րոջը փառքը քերովբէներուն վրա-
յէն տանը սեմը վերացաւ , և
զտունը ամպով լեցուեցաւ , ու
սրահը Տէրոջը փառքին պայծա-
5 ռութեամբը լեցուեցաւ ։ Եւ
էքերովբէից թևերուն ձայնը մինչև
արտաքին գաւիթը կը լսուէր ըԱ-
մենակարող Աստուծոյն ձայնին
6 պէս , երբոր կը խօսի ։ Ու երբոր
կտաւէ զգեստ հագած մարդուն
հրամայեց , ու ըսաւ թէ՝ Քերով-
բէներուն մէջտեղը եղող անիւնե-
րուն մէջէն կրա՛կ առ , անիկայ
գնաց անիւներուն քովը կայնե-
7 ցաւ ։ Ու քերովբէներուն մէջէն
քերովբէին մէկը՝ իր ձեռքը քերով-
բէներուն մէջտեղը եղող կրակին
երկընցուց՝ ու առաւ , և կտաւէ
զգեստ հագնողին ձեռքը տուաւ .
8 անիկայ ալ առաւ ու ելաւ ։ թՈւ
քերովբէից թևերուն տակը՝ մար-
դու ձեռքի նմանութիւն կ'երև-
նար ։
9 ժԵւ տեսայ որ ահա քերովբէնե-
րուն քովը չորս անիւ կար , ամէն
մէկ քերովբէին քովը մէյմէկ անիւ .
ու անիւներուն երևոյթը իտօսկեքա-
10 րի կը նմանէր ։ Եւ անոնց երևոյ-
թը՝ չորսին ալ ձևը մէկ էր , որպէս
թէ անիւ անիւի մէջ եղած ըլլար ։
11 լԳացած ատեննին՝ իրենց չորս
կողմերուն վրայ կ'երթային . գա-
ցած ատեննին իրենց աջ կամ ձախ կող-
մը չէին դառնար . վասն զի ո՛ր կողմը
որ գլուխը կը նայէր , անոր ետևէն
կ'երթային . գացած ատեննին չէին
12 դառնար ։ Եւ անոնց բոլոր մարմի-
նը , կռնակները , ու ձեռքերը , ու
թևերը , և խանիւները՝ այսինքն ան
չորսին անիւները՝ ամէն կողմէն աչ-
13 քերով լեցուն էին ։ Անիւներուն
համար լսեցի որ՝ անոնց անուն դը-
14 րուեցաւ՝ *Մրրիկ ։ ծՈւ ամէն մէկը
չորս երես ունէր առջի երեսը քե-
րովբէի երես էր երկրորդ երեսը
մարդու երես էր , ու երրորդը՝ ա-
ռիւծի երես էր , և չորրորդը՝ ար-
15 ծիւի երես էր ։ Ու քերովբէները
վերացան ։ Քոբար գետին քովը
կտեսած կենդանիներս ասոնք էին ։
16 հՈւ երբոր քերովբէները կ'երթա-
յին , անիւներն ալ անոնց քովէն
կ'երթային . ու երբոր քերովբէնե-
րը երկրէն բարձրանալու համար
թևերնին կը վերցընէին աս անիւ-
ներն ալ անոնց քովէն չէին զա-
17 տուեր . ձԵրբոր անոնք կայնէին
անոնք ալ կը կայնէին երբոր ա-
նոնք վերանային անոնք ալ կը վե-
րանային անոնց հետ . վասն զի ա-
նոնց մէջը կենդանիներուն ոգին
կար ։
18 Եւ ղՏէրոջը փառքը տանը սեմին
վրայէն ելաւ ու քերովբէներուն
19 վրայ կայնեցաւ ։ Եւ իմ աչքերուս
առջևը ճքերովբէները ելլելով թե-
ւերնին վերցուցին ու երկրէն
բարձրացան անիւներն ալ անոնց
հետն էին ու Տէրոջը տանը ա-
րևելեան դրանը մուտքը կայնեցան

Ն. Ք. Գ.
իբր 594

թ Գլ. Ա. 8 ։ Հմր 21 ։
ժ Գլ. Ա. 15 ։
ի Գլ. Ա. 16 ։
լ Գլ. Ա. 17 ։
խ Գլ. Ա. 18 ։
* Կամ Գիւրաթաւալ , Եբր. Գաղգաղ ։
ծ Գլ. Ա. 6, 10 ։
կ Գլ. Ա. 5 ։
հ Գլ. Ա. 19 ։
ձ Գլ. Ա. 12, 20, 21 ։
ղ Հմր 4 ։
ճ Գլ. ԺԱ. 22 ։

Ն. Ք. ՇՔ. 594

ու Իսրայէլի Աստուծոյն փառքը
20 վերէն անոնց վրայ էր ։ Քոբար
գետին քովը՝ Իսրայէլի Աստուծոյն
տակը տեսած կենդանիներս ասոնք
էին . ու գիտցայ որ անոնք քերով-
21 բէներ են ։ Ամէն մէկը չորս երես՝
ու ամէն մէկը չորս թեւ ունէր . և
անոնց թեւերուն տակը մարդու
22 ձեռքերու նմանութիւն կար ։ Ու
անոնց երեսներուն երևոյթը՝ նոյն
երեսներուն կը նմանէր՝ որ Քոբար
գետին քովը տեսայ , թէ՛ անոնց
կերպարանքը , և թէ իրենք . ամէն
մէկը շիտակ յառաջ կերթար ։

## ԳԼ. ԺԱ

1 Իշխաններուն մտապարծութիւնը . 4 անոնց մեղքը ու դատաստանը ։ 13 Երբոր Եզեկիէլ կը գանգատի , Աստուած անոր կը յայտնէ իր գիտաւորութիւնը՝ թէ պիտի ազատէ մէկ մնացորդ մը ։ 21 և պիտի պատժէ չարերը ։ 22 Աստուծոյ փառքը քաղաքէն կը վերնայ ։ 24 Եզեկիէլ գերիներուն կը դառնայ ։

1 Ու Հոգին զիս վերցուց , ու Տէ-
րոջը տանը դէպ 'ի արևելք նա-
յող արևելեան դուռը բերաւ . և
ահա դրանը մուտքը քսանուհինգ
մարդ կար . ու անոնց մէջը ժողո-
վուրդին իշխանները՝ Ազուրի որդին
Յեզոնիան , ու Բանեայի որդին
2 Փաղատիան տեսայ ։ Եւ անիկայ
ինծի ըսաւ . Որդի՛ մարդոյ՝ ասոնք
են ան մարդիկները որ անօրէնու-
թիւն կը մտածեն , ու չար խոր-
հուրդներ կու տան աս քաղաքիս
3 մէջ , Ու կ՚ըսեն . Մօտ ժամանակ-
ներս տուներ պիտի չշինուին . աս
քաղաքը կաթսայ է , ու մենք միս
4 ենք ։ Ուստի մարգարէացի՛ր անոնց
վրայ , մարգարէացի՛ր որդի՛ մարդոյ ։
5 Ան ատենը Տէրոջը Հոգին իմ
վրաս ինկաւ , ու ինծի ըսաւ .
Ըսէ՛ որ՝ Տէրը այսպէս կ՚ըսէ .
Դուք այսպէս ըսիք՝ ո՛վ Իսրայէլի
տունը . բայց ես ձեր միտքէն ան-
6 ցածը գիտեմ ։ Դուք աս քա-
ղաքիս մէջ ձեր սպաննուածները
շատցուցիք , ու անոր փողոցները
7 սպաննուածներով լեցուցիք ։ Ա-
նոր համար Տէր Եհովան այսպէս
կ՚ըսէ . Ձեր սպաննուածները՝ որ
անոր մէջը դրիք , անոնք միսն են ,
ու անիկայ կաթսան է . բայց
ձեզ անոր մէջէն պիտի հանեմ ։
Դուք սուրէն վախցաք . ու ես
սուրը ձեր վրայ պիտի բերեմ՝
9 կ՚ըսէ Տէր Եհովան ։ Ու ձեզ ա-
նոր մէջէն պիտի հանեմ , և ձեզ
օտարներուն ձեռքը պիտի մատ-
նեմ , ու ձեր մէջը դատաստան-
10 ներ 'ի գործ պիտի դնեմ ։ Դուք
սրով պիտի իյնաք . Իսրայէլի
սահմանին վրայ ձեզ պիտի դա-
տեմ . ու պիտի գիտնաք թէ ես

Գլ. ա. 1 ։ Գլ. ա. 22 ։ Հմր 15 ։ Գլ. ա. 6 ։ Հմր 14 ։ Գլ. ա. 8 ։ Հմր 8 ։ Գլ. ա. 10 ։ Գլ. ա. 12 ։

Գլ. գ. 12 , 14 ։ ը. 3 ։ Հմր 24 ։ Գլ. ժ. 19 ։ Տն. Գլ. ը. 16 ։ Գլ. ժբ. 22 , 27 ։ Բ Պետ. գ. 4 ։ Տն. Երեմ. ա. 13 ։ Գլ. իդ. 3 , Հ ։ Գլ. բ. 2 ։ գ. 24 ։ Գլ. է. 23 ։ իբ. 3 . 4 ։ Գլ. իդ. 3 , 6 . 10 . 11 ։ Միք. գ. 3 ։ Հմր 9 ։ Գլ. ե. 8 ։ Բ Թագ. իե. 19 . 20 . 21 ։ Երեմ. լթ. 6 ։ ծբ. 10 ։ Գ Թագ. ը. 65 ։ Դ Թագ. ժդ. 25 ։ Սաղ. թ. 16 ։ Գլ. գ. 7 ։ ժգ. 9 , 14 , 21 , 23 ։

11 եմ Տէրը ։ Աս քաղաքը ձեզի հա-
մար կաթսայ պիտի չըլլայ , որ դուք
անոր մէջը միս ըլլաք ։ Իսրայէլի
սահմանին վրայ ձեզ պիտի դա-
12 տեմ . Ու պիտի գիտնաք թէ ես
եմ Տէրը . վասն զի իմ օրէնքնե-
րովս չքալեցիք , ու իմ իրաւունք-
ներս 'ի գործ չդրիք . հապա ձեր
բոլորտիքը եղող ազգերուն սովո-
րութեանցը համեմատ վարուեցաք ։
13 Ու եղաւ որ՝ իմ մարգարէութիւն
ըրած ատենս՝ Բանեայի որդին
Փաղատիան մեռաւ . Ան ատենը
երեսիս վրայ ինկայ , բարձր ձայնով
աղաղակեցի , ու ըսի . Ո՜հ , Տէր
Եհովայ՝ միթէ Իսրայէլի մնացորդը
14 բոլորովին պիտի սպառե՞ս ։ Ան
ատենը Տէրոջը խօսքը ինծի եղաւ՝
15 ըսելով . Որդի՛ մարդոյ՝ քու եղ-
բայրներդ , քու եղբայրներդ , քու
ազգականներդ ու բոլոր Իսրայէլի
տունը՝ ամէնը ան մարդիկներն են՝
որոնց Երուսաղէմի բնակիչները ը-
սին . Տէրոջը քովէն հեռացէ՛ք . աս
երկիրը մեզի ժառանգութիւն տը-
րուած է ։
16 Անոր համար ըսէ . Տէր Եհովան
այսպէս կ՚ըսէ . Թէպէտև զանոնք
ազգերուն մէջը հեռացուցի , ու զա-
նոնք երկիրներուն մէջը ցրուեցի ,
բայց անոնց մտած երկիրներուն
մէջը՝ քիչ մը ատեն անոնց սրբարան
17 պիտի ըլլամ ։ Անոր համար ըսէ՛ .
Տէր Եհովան այսպէս կ՚ըսէ . Ձեզ
ժողովուրդներէն պիտի հաւաքեմ՝
և ձեզ պիտի ժողվեմ ան երկիրնե-
րէն՝ ուր որ դուք ցրուած էք , ու
ձեզի պիտի տամ Իսրայէլի երկիրը ։
18 Եւ հոն պիտի մտնեն , ու անոր
բոլոր գարշութիւնները , ու բոլոր
պղծութիւնները անկէ պիտի վեր-
19 ցընեն ։ Եւ անոնց մէկ սիրտ պի-
տի տամ , ու անոնց ներսի դին
նոր հոգի պիտի դնեմ . և անոնց
մարմինէն քարեղէն սիրտը պիտի
հանեմ , ու անոնց մարմնեղէն սիրտ
20 պիտի տամ . Որպէս զի իմ օրէնք-
ներուս մէջը քալեն , ու իմ իրա-
ւունքներս պահեն , ու զանոնք 'ի
գործ դնեն , և անոնք ինծի ժողո-
վուրդ ըլլան . ես ալ անոնց Աս-
21 տուած ըլլամ ։ Բայց անոնց որոնց
սիրտը իրենց կամացը գարշութիւն-
ներուն , ու պղծութիւններուն ե-
տևէն կ՚երթայ , անոնց ճամբան
իրենց գլուխը պիտի բերեմ , կ՚ը-
սէ Տէր Եհովան ։
22 Ու քերովբէները իրենց թևերը
վերցուցին . ու անիւները անոնց
քովն էր . և Իսրայէլի Աստուծոյն
փառքը վերէն անոնց վրան էր ։
23 Ու Տէրոջը փառքը քաղաքին մէջ-
տեղէն վրայէն ելաւ , և քաղաքին

Ն. Ք. ՇՔ. 594

Տն. Հմր 3 ։ Հմր 10 ։ Ղև. ժը. 3 , 24 , Հ ։ Բ Օր. ժբ. 30 , 31 ։ Գլ. ը. 10 , 14 , 16 ։ Հմր 1 ։ Տն. Գոր. ե. 5 ։ Գլ. թ. 8 ։ Սաղ. դ. 1 ։ Ղա. 9 ։ Եզ. ը. 14 ։ Երեմ. իդ. 5 ։ Գլ. իբ. 25 ։ լդ. 13 ։ լզ. 24 ։ Գլ. լէ. 23 ։ Երեմ. լբ. 39 ։ Գլ. լզ. 26 , 27 ։ Տն. Սոփ. գ. 9 ։ Սաղ. ծա. 10 ։ Երեմ. լա. 33 ։ լբ. 39 ։ Գլ. ժը. 31 ։ Զաք. է. 12 ։ Սաղ. ճե. 45 ։ Երեմ. իդ. 7 ։ Գլ. ժդ. 11 ։ լզ. 28 ։ լէ. 27 ։ Գլ. թ. 10 ։ իբ. 31 ։ Գլ. ա. 19 ։ ժ. 19 ։ Գլ. ը. 4 ։ թ. 3 ։ ժ. 4 , 18 ։ խգ. 4 ։

Ն. Ք. ԶՃ. 594

Հ Գլ. Խգ. 2 ։ Տես Ջոր. Ժդ. 4 ։ Գլ. Ը. 3 ։

արեւելեան կողմը եղող լերանը
վրայ կայնեցաւ ։
24 Ու Հոգին զիս վերցուց, ու
Քաղդէացւոց երկիրը եղող գերի-
ներուն քովը բերաւ. [illegible]
[illegible] Աստուծոյ Հոգւովը տեսիլքի
մէջ. ու այն տեսած տեսիլքս իմ
25 վրայէս ելաւ ։ Ու ես գերիներուն
խօսեցայ Տէրոջը բոլոր խօսքերը՝ որ
ինծի յայտներ էր ։

## ԳԼ. ԺԲ

1 Եզեկիելին չուելուն օրինակովը՝ Սեդեկիային գերութիւնը կը ցուցուի ։ 17 Եզեկիելին դողալը՝ Հրէից ամայութիւնը կը նշանակէր ։ 21 Հրէից անպարծ առակը կը յանդիմանուի ։ 26 Տեսիլքին շուտով կատարուիլը ։

Ե Գլ. Բ. 3, 6. 7. 8 ։ Զ. 26. 27 ։ Ես. Զ. 9. Խբ. 20 ։ Երեմ. Ե. 21 ։ Մատ. Ժգ. 13. 14 ։ Գլ. Բ. 5 ։

1 Եւ Տէրոջը խօսքը ինծի եղաւ ը-
2 սելով. Որդի մարդոյ՝ դուն
ապստամբներու տանը մէջ բնա-
կած ես, որ անոնք տեսնելու աչ-
քեր ունին, ու չեն տեսներ, լը-
սելու ականջներ ունին, ու չեն
լսեր. վասն զի անոնք ապստամբ-
3 ներու տուն են ։ Ու դուն որդի
մարդոյ՝ քեզի չուելու կարասիներ
պատրաստէ, ու անոնց աչքերուն
առջեւը ցորեկով չուէ՝, և անոնց
աչքերուն առջեւը քու եղած տեղէդ
ուրիշ տեղ մը չուէ, գուցէ «ու-
շադրութիւն ընեն, թէեւ անոնք»
4 ապստամբներու տուն են ։ Եւ ա-
նոնց աչքերուն առջեւը քու կա-
րասիներդ ցորեկով հանես չուելու
կարասիներու պէս. բայց դուն ա-
նոնց աչքերուն առջեւը իրիկունը
ելլես՝ գերութեան գացողներուն
5 պէս ։ Անոնց աչքերուն առջեւը
պատը ծակես, ու անկէ հանես.
6 Անոնց աչքերուն առջեւը զանոնք ու-
սիդ վրայ վերցնես, ու մթընցած
ատենը հանես. երեսդ ծածկէ՝ որ
երկիրը չտեսնես. վասն զի քեզ
Իսրայէլի տանը նշան տուի ։
7 Եւ այնպէս ըրի, ինչպէս որ ին-
ծի հրամայուեցաւ. իմ կարասի-
ներս՝ չուելու կարասիներու պէս
ցորեկով հանեցի, ու իրիկունը
ձեռքովս պատը ծակեցի. ու մը-
թընցած ատենը հանեցի. անոնց
աչքերուն առջեւը ուսիս վրայ վեր-
8 ցուցի ։ Եւ առտուանց Տէրոջը
9 խօսքը ինծի եղաւ ըսելով. Որդի
մարդոյ՝ Իսրայէլի տունը՝ այն ա-
պստամբներու տունը քեզի չըսի՞ն
10 թէ՝ Այդ ի՞նչ կ'ընես ։ Անոնց
ըսէ. Տէր Եհովան այսպէս կ'ըսէ.
Աս պատգամը՝ Երուսաղէմի մէջ
եղող իշխանին, ու հոն բնակող
Իսրայէլի բոլոր տանը համար է ։
11 Ըսէ. Ես ձեզի համար նշան եմ.
ես ինչպէս որ ըրի, անոնց այնպէս
պիտի ըլլայ. անոնք պիտի չուեն,

Կամ՝ տեսնեն թէ իրենք

Ես. Ը. 18 ։ Գլ. Դ. 3 ։ Իդ. 24 ։ Հմր 11 ։

Գլ. Բ. 5 ։

Գլ. ԺԷ. 12 ։ Իդ. 19 ։

Մաղ. Ա. 1 ։

Հմր 6 ։

Բ Թագ. Իե. 4. 5. 7 ։

12 ու գերութեան երթան ։ Եւ ա-
նոնց մէջը եղող իշխանը՝ իր ուսին
վրայ բեռ պիտի վերցնէ, ու մը-
թընցած ատենը պիտի ելլէ. պատը
պիտի ծակեն՝ որ անկէ հանեն.
անիկայ իր երեսը պիտի ծածկէ,
13 որ երկիրը աչքով չտեսնէ ։ Եւ
անոր վրայ իմ ցանցս պիտի տա-
րածեմ. ու անիկայ իմ որոգայ-
թիս մէջ պիտի բռնուի. և զանի-
կայ Բաբելոն՝ Քաղդէացւոց երկիրը
պիտի տանիմ. ու անիկայ ան տե-
ղը պիտի չտեսնէ, թէեւ հոն պիտի
14 մեռնի ։ Եւ անոր բոլորտիքը ե-
ղող բոլոր օգնականները, ու անոր
բոլոր գունդերը՝ ամէն հովերու
պիտի ցրուեմ, և անոնց ետեւէն
15 սուր պիտի քաշեմ ։ Ու երբոր
զանոնք ազգերու մէջ ցրուեմ, ու
զանոնք երկիրներու մէջ ցանեմ,
պիտի գիտնան թէ ես եմ Տէրը ։
16 Եւ անոնցմէ՝ սուրէն, սովէն ու
ժանտախտէն՝ քիչ մարդ մնացորդ
պիտի թողում. որպէս զի իրենց
բոլոր պղծութիւնները պատմեն
այն ազգերուն մէջը՝ ուր որ պիտի
մտնեն. ու պիտի գիտնան թէ ես
եմ Տէրը ։
17 Եւ Տէրոջը խօսքը ինծի եղաւ՝ ը-
18 սելով. Որդի մարդոյ՝ քու հացդ
դողալով ուտես, ու ջուրդ տագ-
նապով և անձկութեամբ խմես ։
19 Ու երկրին ժողովրդեանը ըսես.
Իսրայէլի երկրին մէջ եղող Երու-
սաղէմի բնակիչներուն վրայով՝ Տէր
Եհովան այսպէս կ'ըսէ. Անոնք ի-
րենց հացը անձկութեամբ պիտի
ուտեն, ու իրենց ջուրը ապշու-
թեամբ պիտի խմեն. որպէս զի ի-
րենց երկիրը բոլորովին ամայի
մնայ՝ իր բոլոր բնակչացը անիրա-
20 ւութեանը պատճառաւ ։ Եւ
մարդաբնակ քաղաքները պիտի
աւրուին, ու երկիրը ամայի պիտի
ըլլայ. ու պիտի գիտնաք թէ ես
եմ Տէրը ։
21 Եւ Տէրոջը խօսքը ինծի եղաւ՝
22 ըսելով. Որդի մարդոյ՝ ի՞նչ պիտի
ըլլայ ձեզի այն առակը որ դուք Իս-
րայէլի երկրին մէջ կը գործածէք, ու
կ'ըսէք. Օրերը կ'երկննան, ու
23 ամէն տեսիլք պարապ կ'ելլէ ։ Անոր
համար անոնց ըսէ. Տէր Եհովան
այսպէս կ'ըսէ. Աս առակը պիտի
խափանեմ. և աս առակը մէյմըն
ալ Իսրայէլի մէջ պիտի չգործա-
ծեն. բայց անոնց ըսէ. Օրերը
մօտեցան, նաեւ ամէն տեսիլքին
24 կատարումը ։ Վասն զի Իսրայէլի
տանը մէջ մէյմըն ալ սնոտի
տեսիլք, և շողոքորթութեան գու-
25 շակութիւն պիտի չըլլայ ։ Քանզի
ես Տէրս կը խօսիմ", ու խօսած

Ն. Ք. ԶՃ. 594

Երեմ. ԼԹ. 4 ։

Յոբ. ԺԹ. 6 ։ Երեմ. ԾԲ. 9 ։ Ողբ. Ա. 13 ։ Գլ. ԺԷ. 20 ։

Դ Թագ. ԻԵ. 7 ։ Երեմ. ԾԲ. 11 ։ Գլ. ԺԷ. 16 ։

Դ Թագ. ԻԵ. 4. 5 ։ Գլ. Ե. 10 ։

Գլ. Ե. 2. 12 ։

Սաղ. Թ. 16 ։ Գլ. Զ. 7. 14 ։ Ժա. 10 ։ Հմր 16. 20 ։

Գլ. Զ. 8. 9. 10 ։

Գլ. Դ. 16 ։

Եբր. իր լիութենէն

Զաք. Է. 14 ։

Սաղ. ԾԷ. 34 ։

Հմր 27 ։ Գլ. ԺԱ. 3 ։ Ամով. Զ. 3 ։ Բ Պետ. Գ. 4 ։

Յովել. Բ. 1 ։ Սոփ. Ա. 14 ։

Գլ. ԺԳ. 23 ։

Ողբ. Բ. 14 ։

Կամ՝ ես եմ Տէրը ։ ես կը խօսիմ ։

Ես. ԾԵ. 11 ։ Հմր 28 ։ Դան. Թ. 12 ։ Ղուկ. ԻԱ. 33 ։

Ն. Ք. ԶՔ. 594

խօսքս 'ի գործ պիտի դրուի . ալ
պիտի չուշանայ . վասն զի ձեր օ-
րերուն մէջը՝ ով ապստամբներու
տուն , խօսք պիտի խօսիմ , ու
պիտի կատարեմ , կ'ըսէ Տէր Եհո-
վան ։
26 Եւ Տէրոջը խօսքը ինծի եղաւ՝
27 ըսելով . Որդի մարդոյ՝ ահա Իս-
րայէլի տունը կ'ըսեն թէ՝ Ասոր
տեսած տեսիլքը շատ օրերու հա-
մար է . ու անիկայ հեռաւոր ժա-
մանակներու համար մարգարէու-
28 թիւն կ'ընէ ։ Անոր համար անոնց
ըսէ . Այսպէս կ'ըսէ Տէր Եհովան .
Ասկէ ետեւ բնաւ մէկ խօսքս պի-
տի չուշանայ . հապա իմ խօսած
խօսքս պիտի կատարուի՝ կ'ըսէ Տէր
Եհովան ։

## ԳԼ. ԺԳ

1 Սուտ մարգարէներուն յանդիմանութիւն . 10 և անոնց պատ ծեփելը . 17 մարգարէուհիներուն ու անոնց բարձերուն վրայով ։

1 Եւ Տէրոջը խօսքը ինծի եղաւ՝ ը-
2 սելով . Որդի մարդոյ՝ մար-
գարէութիւն ընող Իսրայէլի մար-
գարէներուն դէմ մարգարէացիր ,
ու իրենց սրտէն մարգարէութիւն
ընողներուն ըսէ՝ . Տէրոջը խօսքը
3 մտիկ ըրէք . Տէր Եհովան այսպէս
կ'ըսէ . Վա՜յ անզգամ մարգարէնե-
րուն՝ որոնք իրենց հոգիին ետեւէն
կ'երթան , ու բան մը տեսած չեն ։
4 Քու մարգարէներդ՝ ով Իսրայէլ ,
աւերակներու մէջ եղող աղուէս-
5 ներու պէս եղան ։ Խրամատու-
թեան տեղուանքը չելաք , ու Տէ-
րոջը օրը՝ պատերազմի մէջ հաստատ
կայնելու համար՝ Իսրայէլի տունը
6 պարսպով չպատեցիք ։ Անոնք
ունայն տեսիլք , և սուտ գուշակու-
թիւն կը տեսնեն , և կ'ըսեն թէ՝
Տէրը ըսաւ , թէև Տէրը զանոնք
խրկած չէ . և յոյս կու տան՝ թէ
իրենց խօսքը պիտի կատարուի ։
7 Միթէ դուք ունայն տեսիլքներ
չտեսա՞ք , և սուտ գուշակութիւն-
ներ չխօսեցա՞ք , ու չըսի՞ք թէ՝ Տէրը
խօսեցաւ , երբոր ես խօսած չէի ։
8 Անոր համար Տէր Եհովան այսպէս
կ'ըսէ . Ձեր խօսքը ունայն , ու ձեր
տեսիլքը սուտ ըլլալուն համար ,
ահա ես ձեզի դէմ եմ՝ կ'ըսէ Տէր
9 Եհովան . Եւ իմ ձեռքս՝ ունայն
տեսիլք տեսնող , և սուտ գուշա-
կութիւն ընող մարգարէներուն
դէմ պիտի ըլլայ . անոնք իմ ժո-
ղովրդեանս խորհուրդին մէջ պիտի
չըլլան , ու Իսրայէլի տանը գրքին
մէջ պիտի չգրուին , և Իսրայէլի
երկիրը պիտի չմտնեն . ու պիտի
գիտնաք թէ ես եմ Տէր Եհովան ։
10 Որովհետեւ անոնք իմ ժողովուրդս
կը մոլորցնեն . և Խաղաղութիւն
է՝ կ'ըսեն , երբոր խաղաղութիւն
չկայ . ու անիկայ պատ կը շինէ , և
անոնք կիրով կը ծեփեն զանիկայ .
11 Ան կիրով ծեփողներուն ըսէ որ՝
Անիկայ պիտի իյնայ . յորդահոս
անձրեւ պիտի ըլլայ . և դուք ով
կարկուտի քարեր՝ պիտի իյնաք .
ու զօրաւոր մրրկալից հովը պիտի
12 ճեղքէ ։ Եւ ահա երբոր պատը իյնայ ,
ձեզի պիտի չըսե՞ն թէ՝ Ո՞ւր է ան
13 ծեփը , որ դուք ծեփեցիք ։ Անոր
համար Տէր Եհովան այսպէս կ'ըսէ .
Իմ սրտմտութեամբս մրրկալից
հով պիտի հանեմ . և իմ բարկու-
թեամբս յորդահոս անձրեւ , ու
սրտմտութեամբս կարկուտի քա-
րեր պիտի ըլլան , որ զօրաւոր բնա-
14 ջինջ ընեն ։ Ու կիրով ծեփած պա-
տերնիդ պիտի փլցնեմ . և զանի-
կայ գետնին հետ հաւասար պիտի
ընեմ . ու անոր հիմը պիտի երեւ-
նայ . և անիկայ պիտի իյնայ . ու
դուք անոր մէջը բնաջինջ պիտի
ըլլաք . ու պիտի գիտնաք թէ ես
15 եմ Տէրը ։ Եւ ես իմ սրտմտու-
թիւնս պատին վրայ , ու զանիկայ
կիրով ծեփողներուն վրայ պիտի
կատարեմ , ու ձեզի պիտի ըսեմ .
Պատը , ու զանիկայ ծեփողները
16 ոչինչ եղան , Այսինքն Իսրայէլի
մարգարէները՝ որոնք Երուսաղէմի
վրայ մարգարէութիւն կ'ընեն , և
անոր վրայով խաղաղութեան
տեսիլքներ կը տեսնեն , քանի որ
խաղաղութիւն չկայ՝ կ'ըսէ Տէր Ե-
հովան ։
17 Եւ դուն որդի մարդոյ՝ երեսդ
շիտկէ քու ժողովուրդիդ աղջիկնե-
րուն դէմ՝ որոնք իրենց սրտէն
մարգարէութիւն կ'ընեն , ու անոնց
18 վրայ մարգարէացիր , Ու ըսէ . Տէր
Եհովան այսպէս կ'ըսէ . Վա՜յ ան
կնիկներուն՝ որ ամէն թեւերու տակ
բարձ կը կարեն , և ամէն հասակի
համար գլուխներուն *լաչակներ կը
շինեն , որ հոգիներ որսան . միթէ
դուք իմ ժողովուրդիս հոգիները
որսալով ձեր հոգիները պիտի ապ-
19 րեցնէ՞ք ։ Եւ կաւեր լեցուն գարիի
համար , ու հացի պատառներու
համար՝ իմ ժողովուրդիս առջեւ
զիս պիտի անարգէ՞ք , որպէս զի
ստութեան ականջ դնող ժողո-
վուրդիս ստութիւն զրուցելով՝
չմեռնելու հոգիները մեռցնէք , ու
չապրելու հոգիները ապրեցնէք ։
20 Անոր համար Տէր Եհովան այսպէս
կ'ըսէ . Ահա ես ձեր բարձերուն դէմ
եմ՝ որոնցմով դուք հոգիները կ'որ-
սաք՝ թռչուններու պէս , և զա-
նոնք ձեր թեւերէն պիտի պատռեմ ,
ու ան հոգիները պիտի արձակեմ ,

* Կամ՝ երեսի բարձեր

Ն․ Ք․ ՉՔ․ 594

* Կամ՝ որ թռչին,

Ղ Հմր 9։

Ե Երեմ․ ԻԴ․ 14։

Ժ Հմր 6, Ա։ Գլ․ ԺԸ․ 24։ Միք․ Գ․ 6։

Ի Հմր 9։ Գլ․ ԺԴ․ 8։ ԺԵ․ 7։

թռչուն՝ ան հոգիները որոնք դուք
21 կ'որսաք *թռչուններու պէս"։ Եւ
ձեր լաչակները պիտի պատռեմ,
ու իմ ժողովուրդս ձեր ձեռքէն
պիտի ազատեմ, ու մէյմըն ալ ձեր
ձեռքին մէջը որս պիտի չըլլան․ Ղու
պիտի գիտնաք թէ ես եմ Տէրը։
22 Վասն զի դուք արդարին սիրտը Ձեր
ստութիւններովը տրտմեցուցիք,
որ ես զանիկայ չէի տրտմեցուցած․
ու Ժամբարշտին ձեռքը ուժովցու-
ցիք, որպէս զի իր չար ճամբայէն
23 չդառնայ, ու ապրի։ Անոր համար
Ժ մէյմըն ալ ունայն տեսիլք պիտի
չտեսնէք, և գուշակութիւն պիտի
չընէք․ ու իմ ժողովուրդս ձեր
ձեռքէն պիտի ազատեմ․ Ի և պի-
տի գիտնաք թէ ես եմ Տէրը։

## ԳԼ․ ԺԴ

1 Աստուած կը պատասխանէ կռապաշտներուն՝ իրենց սրտին համեմատ․ 6 զանոնք կը յորդորէ որ ապաշխարեն, յառաջ բերելով մոլորեալ մարգարէներուն պատճառովը գալու դատաստանները։ 12 Աստուծոյ անդառնալի վճիռը սովի վրայով, 15 սպականիչ գազաններու, 17 սուրի, 19 և ժանտախտի վրայով։ 22 Մէկ մնացորդ մը պիտի ազատուէր՝ ուրիշներուն օրինակ ըլլալու համար։

Իրր 594

Ա Գլ․ Ը․ 1։ Ի․ 1։ ԼԳ․ 31։

Բ Գլ․ Է․ 19։ Հմր 4, 7։

Գ Գ Թագ․ Գ․ 13։

† Եբր․ անոնցմէ պիտի հարցուիմ։

1 Ա Իսրայէլի ծերերէն քանի մը
մարդիկ ինծի եկան, ու իմ
2 առջևս նստան։ Եւ Տէրոջը խօսքը
3 ինծի եղաւ՝ ըսելով․ Որդի մար-
դոյ՝ ատ մարդիկը իրենց կուռքերը
իրենց սրտերուն մէջը կանգնեցին,
ու Բ իրենց անօրէնութեանը գայ-
թակղութիւնը իրենց երեսներուն
առջևը դրին․ Գ միթէ ընաւ † անոնց
4 պատասխան պիտի տամ"։ Ուստի
անոնց հետ խօսէ՝, ու անոնց ըսէ՝․
Տէր՝ Եհովան այսպէս կ'ըսէ․ Իս-
րայէլի տունէն ով որ իր կուռքերը
իր սրտին մէջը կանգնէ, ու իր ան-
օրէնութեանը գայթակղութիւնը
իր երեսին առջևը դնէ, ու մարգա-
րէին գայ, ան եկողին՝ ես Տէրս ա-
նոր կուռքերուն շատութեանը հա-
մեմատ պատասխան պիտի տամ․
5 Որպէս զի Իսրայէլի տունը իրենց
սիրտերէն բռնեմ․ վասն զի անոնց
ամէնը՝ իրենց կուռքերովը ինծմէ
օտարացան։
6 Անոր համար Իսրայէլի տանը ը-
սէ՛․ Տէր Եհովան այսպէս կ'ըսէ․
Դարձէ՛ք, ու ձեր կուռքերէն Ձեր
դարձուցէ՛ք․ և ձեր ամէն պղծու-
թիւններէն երեսնիդ դարձուցէ՛ք։
7 Քանզի Իսրայէլի տունէն կամ Իս-
րայէլի մէջ պանդուխտ եղող օտա-
րականներէն ով որ ինծմէ զատուի,
և իր կուռքերը իր սրտին մէջը
կանգնէ, ու իր անօրէնութեանը
գայթակղութիւնը իր երեսին առ-
ջևը դնէ, և մարգարէին գայ՝ անոր
միջոցովը ինծի հարցընելու համար,
ես Տէրս՝ ինծմէ պատասխան պիտի
8 տամ անոր․ Ու իմ երեսս Դ ան
մարդուն վրայ պիտի հաստատեմ,
և զանիկայ Ե նշան ու առակ պիտի
ընեմ, ու զանիկայ իմ ժողովուրդիս
մէջէն բնաջինջ պիտի ընեմ․ Ղու
պիտի գիտնաք թէ ես եմ Տէրը։
9 Եւ թէ որ մէկ մարգարէ մը սը-
խալելով բան մը խօսի, Է ան մար-
գարէն ես Տէրս սխալեցուցի․ ու
իմ ձեռքս անոր վրայ պիտի երկըն-
ցընեմ, և իմ ժողովուրդիս Իսրա-
յէլին մէջէն զանիկայ պիտի կոր-
10 սընցընեմ։ Ու անոնք իրենց պա-
տիժը պիտի կրեն․ Բ ան հարցընողին
պատիժը, ու մարգարէին պատիժը
11 մէկ պիտի ըլլայ։ Որպէս զի Իս-
րայէլի տունը Ը մէյմըն ալ ինծմէ
չխոտորի․ ու մէյմըն ալ իրենց
բոլոր յանցանքներովը չպղծուին․
Թ հապա անոնք ինծի ժողովուրդ
ըլլան․ ես ալ անոնց Աստուած
ըլլամ՝ կ'ըսէ Տէր Եհովան։
12 Եւ Տէրոջը խօսքը ինծի եղաւ՝
13 ըսելով․ Որդի մարդոյ՝ թէ որ մէկ
երկիր մը անհաւատարմութիւն ը-
նելով ինծի դէմ մեղանչէ, ու ես
անոր վրայ իմ ձեռքս երկընցընեմ,
ու Ժ անոր հացին ցուպը կոտրեմ,
և անոր վրայ սով ղրկեմ, ու մար-
14 դը և անասունը անկէ կտրեմ․ Է Ու
թէ որ աս իրեք մարդը՝ Նոյ, Դա-
նիէլ ու Յոբ անոր մէջը ըլլան, ա-
նոնք Ւ իրենց արդարութեամբը
միայն իրենց հոգին պիտի ազատեն՝
կ'ըսէ Տէր Եհովան։
15 Թէ որ երկրին վրայ Ի չար գա-
զաններ բերեմ, որ զանիկայ անզա-
ւակ թողուն, ու ամայի ըլլայ․
այնպէս որ գազաններուն պատճա-
16 ռաւը անկէ անցնող չըլլայ․ Ծ Թէ
որ ան իրեք մարդիկը անոր մէջը
ըլլան, ես կենդանի եմ՝ կ'ըսէ Տէր
Եհովան, որ իրենց տղաքները ու
աղջիկները պիտի չկարենան ազա-
տել․ միայն իրենք պիտի ազատին,
ու երկիրը ամայի պիտի ըլլայ։
17 Կամ Ի թէ որ ան *երկրին վրայ
սուր բերեմ, և ըսեմ թէ՝ Ո՛վ
սուր՝ երկրին մէջէն անցի՛ր․ ու
Հ անկէ մարդը ու անասունը կը-
18 րեմ․ Ձեւ թէ որ ան իրեք մարդիկը
անոր մէջը ըլլան, ես կենդանի եմ՝
կ'ըսէ Տէր Եհովան, որ իրենց տը-
ղաքները ու աղջիկները պիտի չկա-
րենան ազատել․ բայց միայն ի-
րենք պիտի ազատին։
19 Կամ թէ որ ան երկրին վրայ
Ղ ժանտախտ ղրկեմ, ու արիւնով
Ճ իմ բարկութիւնս անոր վրայ
թափեմ, այնպէս որ մարդը ու ա-
20 նասունը անկէ կտրեմ․ Մ Եւ Նոյ,

Ն․ Ք․ ՉՔ․ Իրր 594

Դ Ղև․ ԺԷ․ 10։ Ի․ 3, 5, 6։ Երեմ․ ԽԴ․ 11։ Գլ․ ԺԵ․ 7։

Ե Թուոց․ ԻԶ․ 10։ Բ Օր․ ԻԸ․ 37։ Գլ․ Ե․ 15։

Զ Գլ․ Զ․ 7։

Է Գ Թագ․ ԻԲ․ 23։ Յոբ․ ԺԲ․ 16։ Երեմ․ Դ․ 10։ Բ Թես․ Բ․ 10։

Ը Բ Պետ․ Բ․ 15։

Թ Գլ․ ԺԱ․ 20։ ԼԷ․ 27։

Ժ Ղև․ ԻԶ․ 26։ Ես․ Գ․ 1։ Գլ․ Դ․ 16։ Ե․ 16։

Ի Երեմ․ ԺԵ․ 1։ Հմր 16, 18, 20։ Տես Երեմ․ Է․ 16։ ԺԱ․ 14։ ԺԴ․ 11։

Լ Առակ․ ԺԱ․ 4։

Խ Ղև․ ԻԶ․ 22։ Գլ․ Ե․ 17։

Ծ Հմր 14, 18, 20։

Կ Ղև․ ԻԶ․ 25։ Գլ․ Ե․ 12։ Իա․ 3, 4։ ԻԹ․ 8։ ԼԸ․ 21։

Հ Գլ․ ԻԵ․ 13։ Սոփ․ Ա․ 3։

Ձ Հմր 14։

Ղ Բ Թագ․ ԻԴ․ 15։ Գլ․ ԼԸ․ 22։

Ճ Գլ․ Է․ 8։

Մ Հմր 14։

Ն. Ք. Գ. Ք. իբր 594

Դանիէլ ու Յոբ անոր մէջը ըլլան,
ես կենդանի եմ՝ կ'ըսէ Տէր Եհո-
վան, որ եթէ մէկ տղան կամ աղ-
ջիկը պիտի չկարենան ազատել.
անոնք իրենց արդարութեամբը մի-
այն իրենց անձը պիտի ազատեն։

Ծ Գլ. ի. 17. Լդ. 27.

21 Սակայն Տէր Եհովան այսպէս
կ'ըսէ. Ո՛րչափ աւելի, երբոր Ծես
իմ չորս սաստիկ պատիժներս՝
սուրը, սովը, չար գազանները ու
ժանտախտը Երուսաղէմի վրայ խրը-
կեմ, մարդը ու անասունը անկէ

Ն Գլ. զ. 8.

22 կտրելու համար։ Նբայց ահա հոն
ազատուած մնացորդ մը պիտի ըլ-
լայ, այսինքն տղաքներու ու աղջիկ-
ներու՝ որոնք պիտի ելլեն. ահա

Ն Գլ. ի. 43.

անոնք ձեզի պիտի ելլեն. և Նանոնց
ճամբան ու անոնց գործքերը պիտի
տեսնէք. ու Երուսաղէմի վրայ բե-
րած չարիքիս վրայով՝ անոր վրայ
բերած բոլոր չարիքիս վրայով պիտի
23 մխիթարուիք։ Ու երբոր անոնց
ճամբան ու գործքերը տեսնէք, ա-
նոնք ձեզ պիտի մխիթարեն. և
պիտի գիտնաք՝ թէ ինչ որ ըրի
անոր մէջը, Ոառանց պատճառի
չըրի՝ կ'ըսէ Տէր Եհովան։

Ո Երեմ. իբ. 8, 9.

## ԳԼ. ԺԵ

1 Որթին ճիւղը բանի մը օգտակար չըլլալուն օ-
րինակովը՝ 6 Երուսաղէմի մերժուիլը կը ցու-
ցուի։

1 Ու Տէրոջը խօսքը ինծի եղաւ՝ ը-
2 սելով. Որդի՛ մարդոյ՝ որթին
փայտը ի՞նչ աւելի արժէք ունի ա-
մէն ուրիշ փայտերէն, այսինքն ա-
նանկ շառաւիղ մը՝ որ անտառի
3 ծառերուն մէջն է։ Միթէ անկէ
փայտ կ'առնուի՞ բանի մը գործ-
ածելու համար. կամ թէ անկէ
ցից մը կ'առնուի՞ անկէ աման մը
4 կախելու համար։ Ահա Ակրակի
մէջ կը նետուի, անոր կերակուր
ըլլալու համար. կրակը անոր եր-
կու ծայրերը կ'ուտէ. ու մէջը
կ'այրի. միթէ անիկայ բանի մը
5 օգտակա՞ր է։ Ահա անիկայ ամ-
բողջ եղած ատենը՝ բանի մը չգար.
ո՞ւր մնաց որ անիկայ բանի մը օգ-
տակար ըլլայ՝ կրակը զանիկայ ու-
6 տելէն ու այրելէն ետքը։ Անոր
համար Տէր Եհովան այսպէս կ'ը-
սէ. անտառի փայտերուն մէջը
ինչպէս է որթին փայտը՝ որն որ
կրակին տուի կերակուրի համար,
այնպէս ալ Երուսաղէմի բնակիչ-
7 ները տուի։ Եւ Բիմ երեսս անոնց
վրայ պիտի հաստատեմ. Գանոնք
մէկ կրակէ պիտի ելլեն, և ուրիշ
կրակ մը զանոնք պիտի ուտէ. ու
երբոր իմ երեսս անոնց վրայ հաս-
տատեմ, Դպիտի գիտնաք թէ ես
8 եմ Տէրը։ Եւ իրենց անհաւա-

Ա Յոհ. ժե. 6.

Բ Ղև. ժէ. 10. Գլ. ժդ. 8.

Գ Եսայ. իդ. 18.

Դ Գլ. զ. 7. Է. 4. Ժա. 10. ի. 38, 42, 44.

տարմութիւն ընելուն համար, եր-
կիրը ամայի պիտի ընեմ՝ կ'ըսէ Տէր
Եհովան։

Ն. Ք. Գ. Ք. իբր 594

## ԳԼ. ԺԶ

1 Մարգարէն թշուառ երախայի մը նմանու-
թիւնով՝ Երուսաղէմի բնական վիճակը կը
ստորագրէ։ 6 Աստուծոյ չափազանց սէրը
անոր վրայ։ 15 Երուսաղէմի այլանդակ պոռ-
նկութիւնը. 35 անոր ծանր դատաստաննե-
րը։ 44 Անոր մեղքը՝ իր մօրը մեղքին հետ
հաւասար, և իր քոյրերուն՝ Սոդոմին ու Սա-
մարիային մեղքերէն աւելի ըլլալով՝ սաստիկ
պատիժներու կ'արժանանայ։ 60 Վերջը խա-
ղաղութիւն կը խոստացուի անոր։

594

1 Դարձեալ Տէրոջը խօսքը ինծի ե-
2 ղաւ՝ ըսելով. Որդի՛ մարդոյ՝
ԱԵրուսաղէմին՝ իր պղծութիւննե-
3 րը գիտցուր. Ու ըսէ. Տէր Եհովան
այսպէս կ'ըսէ Երուսաղէմին. Քու
սկիզբդ Բու ծնունդդ՝ Քանանա-
ցւոց երկրէն էր. Գքու հայրդ Ա-
մօրհացի, ու մայրդ Քետացի էր։
4 Եւ քու ծնունդդ այսպէս էր. Դքու
ծնած օրդ՝ պորտդ չկտրուեցաւ, ու
մաքրուելու համար՝ ջրով չլուա-
ցուեցար, և աղով չաղուեցար, ու
խանձարուրով չփաթթուեցար։
5 Աչք մը քեզի չխնայեց, որ քեզի
ողորմի, ու աս բաներուն մէկը
քեզի ընէ. բայց ծնած օրդ՝ քու
անձիդ գարշութեամբը դաշտի ե-
6 րեսին վրայ նետուեցար. Ու ես
քու քովէդ անցայ, և քեզ արեանդ
մէջ կոխուած տեսայ. ու երբոր
արեանդ մէջն էիր, քեզի՝ Ապրէ՛
ըսի. այո՛ երբոր արեանդ մէջն էիր,
7 քեզի՝ Ապրէ՛ ըսի. Եքեզ դաշտի
բոյսերուն պէս բիւրաւոր ըրի. և
շատցար ու մեծցար, և կատարեալ
գեղեցկութեան հասար. ստինք-
ներդ գոյացան, ու մազերդ աճե-
ցան. բայց դուն մերկ ու անծած-
կոյթ էիր։
8 Եւ քու քովէդ անցայ, ու քեզի
նայեցայ. և ահա քու ժամանակդ
սիրոյ ժամանակ էր. Զու ես իմ
քղանցքս քու վրադ տարածեցի,
և քու մերկութիւնդ ծածկեցի. ու
քեզի երդում ընելով՝ քեզի հետ
ուխտ ըրի՝ կ'ըսէ Տէր Եհովան, ու
9 Էդուն իմս եղար։ Եւ քեզ ջրով
լուացի, ու քու վրայէդ քու ա-
րիւնդ աղէկ մաքրեցի, ու քեզ ե-
10 ղով օծեցի. Եւ քեզի նկարագործ
հանդերձ հագցուցի, ու քեզի թե-
հաշի մորթէ շինուած մուճակներ
հագցուցի, և քու մէջքդ բեհեզէ
գօտի կապեցի, ու քեզ մետաքս-
11 ներով ծածկեցի. Եւ քեզ զար-
դերով զարդարեցի, ու Ըձեռքերուդ
վրայ ապարանջաններ դրի, Թու
12 պարանոցիդ վրայ մանեակ դրի. Եւ
քու Ժքթիդ օղակ, ու ականջներդ
գինտեր, ու գլուխդ պարծանաց

Ա Գլ. ի. 4. իբ. 2. Լգ. 7, 8, 9.

Բ Գլ. իա. 30.

Գ Հմր 45.

Դ Ովս. բ. 3.

Ե Ել. ա. 7.

Զ Հռութ. գ. 9.

Է Ել. ժթ. 5. Երեմ. բ. 2.

Ը Ծն. իդ. 22, 47.

Թ Առակ. ա. 9.

Ժ Եսայ. գ. 21.

Ն. Ք. ԳՔ. 594

13 պսակ դրի ։ Եւ դուն ոսկիով ու
արծաթով զարդարուեցար ․ ու քու
հանդերձներդ բեհեզ , մետաքս ու
նկարագործ եղան ․ Էնաշիհ , ու
մեղր , ու եղ կերար , և խիստ շատ
Նգեղեցկացար , ու թագաւորու-
14 թեան հասար ։ Եւ քու գեղեցկու-
թեանդ համար Էքու անունդ ազ-
գերուն մէջը տարածուեցաւ ․ վասն
զի անիկայ կատարեալ եղաւ ան
վայելչութեանը պատճառաւ , որն
որ քու վրադ դրի՝ կ'ըսէ Տէր Եհո-
վան ։
15 Բայց դուն քու անուանդ պատ-
ճառաւ՝ ծքու գեղեցկութեանդ ա-
պաւինելով՝ Լշնութիւն ըրիր , և
քու պոռնկութիւնդ ամէն անցնո-
ղին առջևը թափեցիր ․ անորը կ'ըլ-
16 լար ։ ԿՈւ քու հանդերձներէդ ա-
ռիր , և քեզի գոյնզգոյն զարդերով
բարձր տեղեր շինեցիր , ու անոնց
վրայ շնութիւն ըրիր ․ [illegible]
17 չեղաւ , ոչ ալ պիտի ըլլայ ։ Եւ
իմ քեզի տուած ոսկիէս ու արծա-
թէս՝ քու պարծանացդ զարդերը
առիր , ու քեզի արուական պատ-
կերներ շինեցիր , և անոնցմով պոռ-
18 նըկեցար ։ Ու քու նկարագործ
հանդերձներդ առնելով՝ զանոնք
ծածկեցիր , ու իմ եղս ու խունկս
19 անոնց առջին դրիր ․ ՅՈւ քեզի
տուած հացս , քեզի կերցուցած
նաշիհս , եղս ու մեղրս ալ անոնց
առջին դրիր անուշ հոտի համար ․
ու ԱՅՆՊԷՍ եղաւ՝ կ'ըսէ Տէր Եհովան ։
20 ՂԵւ ինծի համար ծնած տղաքներդ
ու աղջիկներդ առիր , ու զանոնք
կերակուրի համար զոհ ըրիր անոնց ․
աս քու պոռնկութիւնդ քի՞չ բան
21 է , Որ իմ տղաքներս մորթեցիր ,
ու զանոնք անոնց տուիր՝ [illegible] ան-
22 ցընելով ։ Եւ քու բոլոր պղծու-
թիւններուդ ու պոռնկութիւննե-
րուդ մէջ՝ քու Սմանկութեանդ օ-
րերը չյիշեցիր , Յերբոր մերկ ու
անծածկոյթ , և քու արեանդ մէջ
23 կոխուած էիր ։ Ու եղաւ որ բոլոր
չարութիւններէդ ետքը՝ ( Վա՜յ վա՜յ
24 քեզի՛ կ'ըսէ Տէր Եհովան , ) Դուն
Ջքեզի բոզանոց ալ շինեցիր , ու
Նքեզի ամէն հրապարակի մէջ բարձր
25 տեղ ըրիր ։ ՂԱմէն ճամբու գլուխ
քու բարձր տեղերդ շինեցիր , ու
քու գեղեցկութիւնդ զզուելի ըրիր ,
և ամէն անցնողին՝ քու ոտքերդ բա-
ցիր , ու քու պոռնկութիւններդ
26 շատցուցիր ։ Եւ քու մեծանդամ
սահմանակիցներուդ՝ ՊԵգիպտոսի
որդւոցը հետ պոռնկութիւն ըրիր ,
ու զիս սրդողցընելու համար՝ քու
պոռնկութիւններդ շատցուցիր ։
27 Եւ ահա իմ ձեռքս քու վրադ եր-
կընցուցի , ու քու ռոճիկդ պակսե-

Ն. Ք. ԳՔ. 594 · Է Բ Օր. ԼԲ. 13, 14։ · Լ Սաղ. ԽԸ. 2։ · Է Ողբ. Բ. 15։ · Ծ Տես Բ Օր. ԼԲ. 15։ Երեմ. Է. 4։ Միք. Գ. 11։ · Լ Եսա. Ա. 21։ ԾԷ. 8։ Երեմ. Բ. 20։ Գ. 2, 6, 20։ Գլ. ԻԳ. 3, 8, 11, 12։ Ովս. Ա. 2։ · Կ Գ Թագ. ԻԳ. 7։ Գլ. Է. 20։ Ովս. Բ. 8։ · Յ Ովս. Բ. 8։ · Ղ Դ Թագ. ԺԶ. 3։ Սաղ. ՃԶ. 37, 38։ Եսա. ԾԷ. 5։ Երեմ. Է. 31։ ԼԲ. 35։ Գլ. Ի. 26։ ԻԳ. 37։ · Ս Երեմ. Բ. 2։ Հմր 43, 60։ Ովս. ԺԱ. 1։ · Յ Հմր 4, 5, 6։ · Ջ Հմր 31։ · Ն Եսա. ԾԷ. 5, 7։ Երեմ. Բ. 20։ Գ. 2։ · Ղ Առակ. Թ. 14։ · Պ Գլ. Ը. 10, 14։ Ի. 7, 8։ ԻԳ. 19, 20, 21։

ցուցի , ու քեզ քու թշնամինե-
րուդ՝ ՆՓղշտացւոց աղջիկներուն
կամացը յանձնեցի , որոնք քու
անհամեստ վարմունքէդ կ'ամչնան ։
28 Եւ չկշտանալով՝ ՊԱսորեստանի
որդւոցը հետ պոռնկութիւն ըրիր ,
և թէպէտ անոնց հետ պոռնկու-
թիւն ըրիր , սակայն չկշտացար ։
29 Ու Քանանացւոց երկրէն ՉմինչԵւ
Քաղդէացւոց երկիրը՝ քու պոռնը-
կութիւններդ շատցուցիր ․ բայց
30 ասով ալ չկշտացար ։ Քու սիրտդ
ո՜րչափ տկար է՝ կ'ըսէ Տէր Եհո-
վան , որ աս ամէն բաները ըրիր ,
անամօթ պոռնիկ կնկան մը գործ-
31 քը ։ Ամէն ճամբու գլուխ՝ Ռքու
բոզանոցներդ շինեցիր , և քեզի
ամէն հրապարակի մէջ բարձր տեղ
ըրիր , ու վարձքը անարգելով՝
32 պոռնիկ կնկան պէս չեղար , Հապա
ան շնութիւն ընող կնկանը պէս
եղար , որ իր էրկանը տեղը օտար-
33 ներ կ'առնէ ։ Ամէն բոզերուն
վարձք կու տան ․ բայց Սդուն ա-
մէն հոմանիներուդ քու վարձքերդ
կու տաս ․ այո՛ կաշառք կու տաս
անոնց՝ որ ամէն կողմէն քեզի գան ,
քեզի հետ պոռնկութիւն ընելու
34 համար ։ Եւ քու պոռնկու-
թեանցդ մէջ՝ կնիկներուն եղածին
ներհակը կ'ըլլայ քեզի ․ վասն զի
պոռնկութեան համար քու ետևէդ
եկող մարդ չկայ ․ և քու վարձք
տալովդ , ու ուրիշէն վարձք չառ-
նելովդ , դուն [illegible] ներհա-
կը եղար ։
35 Ասոր համար՝ ո՛վ պոռնիկ՝ Տէ-
36 րոջը խօսքը մտի՛կ ըրէ ․ Տէր Եհո-
վան այսպէս կ'ըսէ ․ Որովհետև
քու պղինձդ տարածուեցաւ , և
քու պոռնկութիւններովդ մերկու-
թիւնդ՝ քու հոմանիներուդ , ու
ամէն գարշելի կուռքերուդ յայտ-
նուեցաւ , և անոնց նուիրած Նոր-
37 ղոցդ արիւնը [illegible] , Անոր
համար ահա ՏԵս պիտի ժողվեմ
քու բոլոր հոմանիներդ՝ որոնց դուն
հաճոյ եղար , և ամէն անոնք՝ որ
սիրեցիր , ու ամէն անոնք՝ որ ա-
տեցիր ․ և զանոնք ամէն կողմէն
քու վրադ պիտի ժողվեմ , ու քու
մերկութիւնդ անոնց պիտի բա-
նամ ․ և անոնք քու բոլոր մերկու-
38 թիւնդ պիտի տեսնեն ։ Ու քեզ
պիտի դատեմ՝ Ըշնութիւն ընող
և Ժարիւն թափող կնիկներուն
դատաստանովը , ու քեզի՝ բարկու-
թեամբ ու նախանձով արեան վրէժ
39 պիտի տամ ․ Եւ քեզ անոնց ձեռ-
քը պիտի տամ ․ ու Ռքու բոզա-
նոցդ պիտի փլցընեն , ու քու բարձր
տեղերդ պիտի աւրեն , և Իքու
հանդերձներէդ քեզ պիտի մերկա-

Ն. Ք. ԳՔ. 594 · Ն Բ Թգ. ԺԲ. 18, 19։ Հմր 57։ · Պ Դ Թագ. ԺԶ. 7, 10։ Բ Մն. ԻԸ. 23։ Երեմ. Բ. 18, 36։ Գլ. ԻԳ. 12, Ա։ · Չ Գլ. ԻԳ. 14, Ա։ · Ռ Հմր 24, 39։ · Ս Եսա. Լ. 3։ Ովս. Ը. 9։ · Լ Հմր 20։ Երեմ. Բ. 34։ · Տ Երեմ. ԺԳ. 22, 26։ Ողբ. Ա. 8։ Գլ. ԻԳ. 9, 10, 22, 29։ Ովս. Բ. 10։ Ը. 10։ Նաւ. Գ. 5։ · Ը Ղև. Ի. 10։ Բ Օր. ԻԲ. 22։ Գլ. ԻԳ. 45։ · Ժ Ծն. Թ. 6։ Ել. ԻԱ. 12։ Տես Հմր 20, 36։ · Ռ Հմր 24, 31։ · Ի Գլ. ԻԳ. 26։ Ովս. Բ. 3։

Ն. Ք. ԶՌ. 594

Գլ. ԻԴ. 10, 47: Յոհ. Ը. 5, 7: Բ Օր. ԺԴ. 16: Դատ. ԻԸ. 9: Երեմ. ԼԹ. 8: Ծն. 13: Գլ. Ե. 8: ԻԳ. 10: Գլ. ԻԴ. 27: Գլ. Ե. 13: Հմր 22: Սաղ. ՀԸ. 42: Գլ. Թ. 10: ԺԱ. 21: ԻԲ. 31: Հմր 3: Բ Օր. ԼԲ. 32: Ես. Ա. 10: Ը Դ Թագ. ԻԱ. 9: Գլ. Ե. 6, 7: Հմր 48, 51: Մատ. Ժ. 15: ԺԱ. 24: Ծն. ԺԳ. 10: Ծն. ԺԴ. 13: ԺԲ. 20: ԺԹ. 5: Ծն. ԺԹ. 24:

ցընեն, ու քու պարծանացդ զար-
դերը պիտի առնեն, և քեզ մերկ ու
40 անծածկոյթ պիտի թողուն. Ու
քու վրադ ժողովք մը ոտք պիտի
հանեն, և քեզ քարերով պիտի
քարկոծեն, ու իրենց սուրերովը
41 քեզ պիտի խոցոտեն. Եւ քու
տուներդ կրակով պիտի այրեն, ու
շատ կնիկներու առջին քու վրադ
դատաստաններ 'ի գործ պիտի դը-
նեն. և քեզ պոռնկութիւն ընե-
լէն պիտի դադրեցընեմ, ու մէյմըն
42 ալ պարգև պիտի չտաս: Այսպէս
պիտի դադրեցընեմ իմ բարկու-
թիւնս որ քեզի դէմ է. ու իմ նա-
խանձս քեզմէ պիտի վերնայ, ու
պիտի հանդարտիմ, ու ալ պիտի
43 չբարկանամ: Որովհետև դուն
քու մանկութեանդ օրերը չյիշե-
ցիր, հապա աս ամէն բաներով զիս
որդոզչցուցիր. անոր համար ահա
ես ալ քու ճամբադ քու գլուխդ
պիտի բերեմ, կ'ըսէ Տէր Եհովան.
ու դուն քու բոլոր պղծութիւննե-
րուդ վրայ՝ աս եղեռնագործու-
թիւնը պիտի չընես:
44 Ահա ամէն առակ խօսողը քու
վրադ առակ պիտի խօսի՝ ըսելով.
Ինչպէս է մայրը, աղջիկն ալ նոյն-
45 պէս է: Դուն քու մօրդ աղջիկն
ես, որ իր էրիկէն, ու տղաքներէն
զզուեցաւ. և քու քոյրերուդ քոյրն
ես, որ անոնք իրենց էրիկներէն ու
տղաքներէն զզուեցան. Ձեր մայ-
րը Քետացի, ու ձեր հայրը Ամոր-
46 հացի է: Ու քու մեծ քոյրդ Սա-
մարիան է, որ իր աղջիկներովը
քու ձախ կողմդ կը բնակի, և
քեզմէ պզտիկ քոյրդ Սոդոմն է,
որ իր աղջիկներովը քու աջ կողմդ
47 կը բնակի: Ու դուն անոնց ճամ-
բաներուն մէջը չքալեցիր, և անոնց
պղծութիւններուն պէս չըրիր.
հապա որպէս թէ անոնց ըրածը պըզ-
տիկ բան չէին էր, դուն քու բոլոր
ճամբաներուդ մէջ անոնցմէ աւե-
48 լի ապականեցար: Ես կենդանի
եմ՝ կ'ըսէ Տէր Եհովան, որ քու
քոյրդ Սոդոմը՝ ինքը ու իր աղջիկ-
ները նոյնպէս չըրին, ինչպէս որ
դուն ու քու աղջիկներդ ըրիք:
49 Ահա քու քրոջդ Սոդոմին ան-
օրէնութիւնը աս էր. անիկայ իր
աղջիկներովը՝ հպարտութիւն, ծհա-
ցի կուշտութիւն ու անհոգ հան-
գըստութիւն ունեցաւ, և աղքա-
տին ու տնանկին ձեռքը չուժով-
50 ցուց: Ու հպարտացան, և իմ
առջևս պղծութիւն ըրին. ու նզա-
նոնք տեսածիս պէս՝ վերցուցի:
51 Եւ Սամարիան՝ քու մեղքերուդ կէ-
սին չափ մեղք չգործեց. ու դուն
քու պղծութիւններդ անոնցմէ ա-
ւելի շատցուցիր, և քու ըրած բո-
լոր պղծութիւններովդ քու քոյ-
52 րերդ արդարացուցիր: Ու դուն՝ որ
քու քոյրերդ դատապարտեցիր, քու
անարգանքդ կրէ՝ քու մեղքերուդ
համար, որ դուն անոնցմէ աւելի
պղծութիւն ըրիր. անոնք քեզմէ
արդար են. իսկ դուն՝ քոյրերդ ար-
դարացընելուդ համար, ամչցիր ու
53 քու անարգանքդ կրէ: Ու ես
պիտի դարձընեմ անոնց գերութիւ-
նը, Սոդոմին ու անոր աղջիկնե-
րուն գերութիւնը, և Սամարիա-
յին ու անոր աղջիկներուն գե-
րութիւնը. անոնց մէջը քու գե-
րութիւնդ ալ ետ պիտի դարձնեմ.
54 Որպէս զի քու անարգանքդ կրես,
ու ամէն ըրածէդ ամչնաս, անոնց
մխիթարութիւն ըլլալուդ համար:
55 Եւ քու քոյրերդ՝ Սոդոմը ու անոր
աղջիկները իրենց առջի վիճակին
պիտի դառնան. և Սամարիան ու
անոր աղջիկներն ալ իրենց առջի
վիճակին պիտի դառնան. ու դուն,
և քու աղջիկներդ ալ ձեր առջի
56 վիճակին պիտի դառնաք: Վասն
զի քու հպարտութեանդ օրը՝ քու
քոյրդ Սոդոմը քու բերնէդ չլսուե-
57 ցաւ, Քանի որ դեռ քու չարու-
թիւնդ յայտնուած չէր, ինչպէս որ
հիմա յայտնուեցաւ, երբոր Ասո-
րւոց աղջիկներուն առջևը, ու ա-
նոնց բոլորտիքը եղող բոլոր Փղըշ-
տացւոց աղջիկներուն առջևը ամօ-
թով եղար, որ անոնք ամէն կողմէն
58 քեզ նախատեցին: Քու եղեռնա-
գործութիւնդ և քու պղծութիւն-
ներդ դուն պիտի կրես՝ կ'ըսէ Տէրը:
59 Վասն զի Տէր Եհովան այսպէս
կ'ըսէ. Քու ըրածիդ համեմատ պի-
տի ընեմ քեզի, որ երդումը ա-
նարգեցիր, և ուխտը աւրեցիր:
60 Բայց ես քու մանկութեանդ օրերը
քեզի հետ ըրած ուխտս պիտի յի-
շեմ, ու քեզի հետ յաւիտենական
61 ուխտ պիտի հաստատեմ. Եւ
դուն քու ճամբաներդ պիտի յի-
շես, ու պիտի ամչնաս՝ երբոր ըն-
դունիս քեզմէ մեծ և քեզմէ պզտիկ
քոյրերդ, ու երբոր զանոնք քեզի
աղջիկներու տեղ տամ, բայց ոչ
62 թէ քու ուխտովդ. Ահա ես
քեզի հետ իմ ուխտս պիտի հաս-
տատեմ, ու պիտի գիտնաս թէ ես
63 եմ Տէրը. Որպէս զի յիշես ու
ամչնաս. և ամչնալուդ պատճա-
ռովը մէյմըն ալ բերանդ չբանաս,
երբոր քու ըրած բոլոր գործքերուդ
համար՝ քեզի քաւութիւն ընեմ՝
կ'ըսէ Տէր Եհովան:

Ն. Ք. ԶՂ. 594

Երեմ. Գ. 11: Մատ. ԺԲ. 41, 42: Տես Ես. Ա. 9: Հմր 60, 61: Երեմ. Ի. 16: Գլ. ԺԴ. 22, 23: Գ Թագ. ԺԶ. 5: Բ Մն. ԻԸ. 18: Ես. Է. 1: Ես. ԺԴ. 28: Հմր 27: Գլ. ԻԳ. 49: Բ Օր. ԻԹ. 12, 14: Գլ. ԺԵ. 13, 16: Սաղ. ՃԶ. 45: Երեմ. ԼԲ. 40: Ծ. 5: Գլ. Ի. 43: ԼԶ. 31: Ես. ԾԴ. 1: Կ. 4: Գաղ. Դ. 26, ԵՏ: Երեմ. ԼԱ. 31, ԵՏ: Ովս. Բ. 19, 20: Հմր 61: Հռով. Գ. 19:

## ԳԼ. ԺԷ

1 Երկու արծիւներու ու մէկ որթի օրինակով՝
11 կը ցուցուի. Ասուածոյ դատաստանը Երու-

Ն. Ք. ԳՔ. իբր 594

սաղեմի վրայ, որովհետև Բաբելոնէն ապըս-
տամբելով Եգիպտոսին ապաւինեցան ։ 22
Աստուած կը խոստանայ աւետարանին եղևինը
տնկել ։

1 Ու Տէրոջը խօսքը ինծի եղաւ՝ ը-
2 սելով. Որդի մարդոյ՝ Իսրա-
յէլի տանը հանելուկ պատմէ, ու
3 առակ խօսէ, Ու ըսէ՛. Տէր Եհո-
վան այսպէս կ'ըսէ. ա Մէկ մեծ
արծիւ մը՝ մեծ թևերով, երկայն
փետուրներով ու գոյնզգոյն բարակ
փետուրներով լեցուն՝ Լիբանան ե-
կաւ, ու բ եղևինին ամենաբարձր
4 ծիւղը առաւ. Անոր ընձիւղներուն
ծայրը փրցուց, և զանիկայ վա-
ճառականի երկիրը տարաւ, ու
զանիկայ վաճառականաց քաղաքը
5 դրաւ ։ Եւ ան երկրին հունտէն
առաւ, ու զանիկայ գ պարարտ ար-
տի մէջ դրաւ. զանիկայ շատ ջուրե-
րու քով տարաւ. դ ուռիի պէս
6 դրաւ. (Եւ անիկայ բուսաւ, ու
տարածուած ե կարճահասակ որթ
մը եղաւ.) անանկ որ անոր ոս-
տերը դէպ 'ի իրեն նային, ու ար-
մատները իր տակը ըլլան. և զանիկայ
որթ ըլլալով՝ ոստեր բուսցուց, ու
ընձիւղներ արձակեց ։
7 Եւ մէկ ուրիշ մեծաթև ու բազ-
մափետուր մեծ արծիւ մըն ալ կար.
և ահա զ աս որթը՝ իր արմատները
դէպ 'ի անոր ծռեց, ու իր ոստերը
դէպ 'ի անոր երկընցուց. որպէս զի
իր տնկուած ածուներովը զինքը
8 ոռոգէ ։ Անիկայ պարարտ արտի
մէջ, շատ ջուրերու քով տնկուե-
ցաւ, որ ոստեր արձակէ, և պը-
տուղ բերէ, ու ազնիւ որթ ըլլայ ։
9 Ըսէ՛ որ՝ Տէր Եհովան այսպէս կ'ը-
սէ. Արդեօք անիկայ պիտի յաջո-
ղի՞. է միթէ ան [illegible] արծիւը անոր
արմատները պիտի չխլէ՞, ու անոր
պտուղը պիտի չփրցընէ՞, որ չոր-
նայ ։ Անոր ամէն բուսած տերև-
ները պիտի չորնան. և առանց մեծ
բազուկի ու շատ ժողովուրդի զա-
10 նիկայ արմատէն պիտի խլէ ։ Եւ
ահա տնկուեցաւ. միթէ պիտի յա-
ջողի՞. ը չէ՞ որ արևելեան հովը ա-
նոր դպածին պէս՝ բոլորովին պիտի
չորնայ. անիկայ իր բուսած ածու-
ներուն վրայ պիտի չորնայ ։
11 Դարձեալ Տէրոջը խօսքը ինծի
12 եղաւ՝ ըսելով. թ Հիմա ապստամբ-
ներու տանը ըսէ՛. Ասոնց ինչ
ըլլալը չէ՞ք գիտեր. ըսէ որ՝ Ահա
ժ Բաբելոնի թագաւորը Երուսաղէմ
եկաւ. և անոր թագաւորը ու իշ-
խանները առաւ, ու զանոնք իր
13 հետը Բաբելոն տարաւ ։ ի Եւ թա-
գաւորին սերունդէն մէկը առնելով,
անոր հետ ուխտ ըրաւ, լ ու անոր
երդում ընել տուաւ. Նաև երկրին
14 զօրաւորները առաւ. Որպէս զի
թագաւորութիւնը խ ցած ըլլայ,
ու չկրնայ զինքը բարձրացընել. և
իր ուխտը պահելով անոր վրայ
15 հաստատ կենայ ։ Բայց ծ անիկայ
անկէ ապստամբեցաւ, ու Եգիպ-
տոս դեսպաններ խրկեց, կ որ իրեն
ձիեր ու շատ զօրքեր տան. հ միթէ
անիկայ յաջողութիւն պիտի գըտ-
նէ՞. աս բաները ընողը պիտի ազա-
տի՞, կամ թէ ուխտը աւրելով
16 պիտի ազատի՞ ։ Ես կենդանի եմ՝
կ'ըսէ Տէր Եհովան, որ անիկայ ան-
շուշտ ձ ան թագաւորին բնակած տե-
ղը՝ որ զինքը թագաւոր ըրեր էր,
որուն երդումը անարգեր էր, ու
անոր ուխտը աւրեր էր, անոր քովը
17 Բաբելոնի մէջ պիտի մեռնի ։ ղ Եւ
Փարաւոնը մեծ զօրքով ու շատ
բազմութիւնով պատերազմի մէջ
անոր համար բան մը պիտի չընէ,
ճ երբոր պատնէշներ կանգնուի, ու
մարտկոցներ շինուի՝ շատ հոգիներ
18 կոտրելու համար ։ Վասն զի ա-
նիկայ երդումը անարգեց, և ուխտը
աւրեց. և ահա անիկայ մ իր ձեռքը
տալէն ետքը, աս ամէն բաները ը-
նելուն համար պիտի չազատի ։
19 Անոր համար Տէր Եհովան այս-
պէս կ'ըսէ. Ես կենդանի եմ՝ որ
անշուշտ անոր գլուխը պիտի դար-
ձընեմ իմ երդումս՝ որ անիկայ ա-
նարգեց, ու իմ ուխտս՝ որ աւրեց.
20 Եւ յ անոր վրայ իմ ցանցս պիտի
տարածեմ. ու անիկայ իմ որոգայ-
թիս մէջ պիտի բռնուի. և զանի-
կայ Բաբելոն պիտի տանիմ, ու
ն հոն անոր հետ դատ պիտի վարեմ,
անոր ինծի դէմ ըրած յանցանքին
21 համար ։ Ու շ անոր բոլոր փախըս-
տականները և անոր բոլոր զօրքերը
սրով պիտի իյնան. ու անոր մնա-
ցորդները ամէն հովերու պիտի ցը-
րուին. ու պիտի գիտնաք թէ ես
Տէրս խօսեցայ ։
22 Տէր Եհովան այսպէս կ'ըսէ. Ես
ալ բարձր եղևինին ամենաբարձր
ո ծիւղէն պիտի առնեմ, ու պիտի
տնկեմ. ես անոր ընձիւղներուն
ծայրէն չ մատղաշը պիտի փրցընեմ,
ու պ մէկ բարձր ու վերացած լեռան
23 մը վրայ պիտի տնկեմ. ջ Զանիկայ
Իսրայէլի բարձր լեռանը վրայ պի-
տի տնկեմ. և անիկայ ոստեր պի-
տի արձակէ, ու պտուղ պիտի
տայ. ու ազնիւ եղևին պիտի ըլ-
լայ. և ռ անոր տակը ամէն տեսակ
թև ունեցող բոլոր թռչունները
պիտի նստին. անոր ոստերուն հո-
24 վանիին տակը պիտի բնակին ։ Եւ
դաշտի բոլոր ծառերը պիտի գիտ-
նան՝ թէ ես Տէրս ս բարձր ծառը
ցածցուցի. ցած ծառը բարձ-

ա Տես Հմր 12, Ը։
բ Դ Թագ. ԻԴ. 12։
գ Բ Օր. Ը. 7—9։
դ Ես. ԽԴ. 4։
ե Հմր 14։
զ Հմր 15։
է Դ Թագ. ԻԵ. 7։
ը Գլ. ԺԹ. 12։ Ովս. ԺԳ. 15։
թ Գլ. Բ. 5։ ԺԲ. 9։
ժ Հմր 3։ Դ Թագ. ԻԴ. 11—16։
ի Դ Թագ. ԻԴ. 17։
լ Բ Մն. ԼԶ. 13։

Ն. Ք. ԳՔ. իբր 594
խ Հմր 6։ Գլ. ԻԹ. 14։
ծ Դ Թագ. ԻԴ. 20։ Բ Մն. ԼԶ. 13։
կ Բ Օր. ԺԷ. 16։ Ես. Լա. 1, 3։ ԼԶ. 6, 9։
հ Հմր 9։
ձ Երեմ. ԼԲ. 5։ ԼԴ. 3։ ԾԲ. 11։ Գլ. ԺԲ. 13։
ղ Երեմ. ԼԷ. 7։
ճ Երեմ. ԾԲ. 4։ Գլ. Դ. 2։
մ Ողբ. Ե. 6։ Տես ա Մն. ԻԹ. 24։
յ Գլ. ԺԲ. 13։ ԼԲ. 3։
ն Գլ. Ի. 36։
շ Գլ. ԺԲ. 14։
ո Ես. ԺԱ. 1։ Երեմ. ԻԳ. 5։ Զաք. Գ. 8։
չ Ես. ԾԳ. 2։
պ Սաղ. Բ. 6։
ջ Ես. Բ. 2, 3։ Գլ. Ի. 40։ Միք. Դ. 1։
ռ Տես Գլ. ԼԱ. 6։ Դան. Դ. 12։
ս Ղուկ. Ա. 52։

Ն. Ք. ԶՓ. Իրր 594

րացուցի . կանանչ ծառը չորցու-
ցի ու չոր ծառը կանանչցուցի .
Ես Տէրս խօսեցայ , ու պիտի կա-
տարեմ ։

## ԳԼ. ԺԸ

1 Աստուած կը յանդիմանէ ազոխին անիրաւ առակը 5 կը ցուցնէ թէ ինքը ինչո՞ր կը վարուի արդար հօր մը հետ , 10 արդար հօր մը չար զաւակին հետ , 14 չար հօր մը արդար զաւակին հետ , 19 չար մարդու մը հետ՝ որ կ'ապաշխարէ , 24 բարի մարդու մը հետ՝ որ կ'ապստամբի 25 իր արդարութիւնը կը պաշտպանէ , 31 և մարդիկ ապաշխարութեան կը յորդորէ ։

594

1 Նարձեալ Տէրոջը խօսքը ինծի ե-
2 ղաւ ըսելով . Ի՞նչ պիտի ըլ-
լայ ձեզի այն առակը՝ որ դուք Իս-
րայէլի երկրին մէջ կը խօսիք ըսե-
լով . Հայրերը ազոխ կերան , ու
3 որդւոցը ակռաները առին ։ Ես
կենդանի եմ՝ կ'ըսէ Տէր Եհովան ,
որ Իսրայէլի մէջ աս առակը մէ՛յ-
4 մըն ալ պիտի չըլլուցէք ։ Ահա
բոլոր հոգիները իմս են . ինչպէս
հօրը հոգին՝ նոյնպէս ալ որդւոյն
հոգին իմս է . Այն անձը որ մեղք
կը գործէ՝ անիկայ պիտի մեռնի ։
5 Իսկ թէ որ մէկ մարդ մը արդար
ըլլայ . և իրաւունք ու արդարու-
6 թիւն ընէ , Լեռներու վրայ չու-
տէ . ու աչքերը դէպ 'ի Իսրայէլի
տանը կուռքերուն չվերցընէ , ու
իր դրացիին կնիկը չպղծէ , և իր
դաշտանին մէջ եղող կնկան մը
7 չմօտենայ , Ու մարդու մը զրկանք
չընէ , ու պարտականին՝ գրաւը
ետ տայ , բռնութեամբ բան մը
չյափշտակէ , և իր հացը քաղցա-
ծին տայ , ու մերկը հանդերձով
8 ծածկէ . Ու վաշխով չտայ ,
ու տոկոսիք չառնէ , իր ձեռքը ան-
օրէնութենէ ետ պահէ , երկու
մարդու մէջ ուղիղ դատաստան
9 տեսնէ , Ճշմարտութիւն ընելով՝
իմ օրէնքներուս մէջը քալէ , ու
իմ իրաւունքներս պահէ . անիկայ
արդար է . անշուշտ պիտի ապրի՝
կ'ըսէ Տէր Եհովան ։
10 Բայց թէ որ անիկայ անիրաւ ա-
րիւնահեղ որդի մը ծնանի , որ
11 ասոնց պէս բան մը ընէ . Այսինքն՝
թէ որ անիկայ այն ամէն աղէկ բա-
ները չընէ , հապա միայն լեռներու
վրայ ուտէ , ու իր դրացիին կնիկը
12 պղծէ , Աղքատին ու տնանկին
զրկանք ընէ , բռնութեամբ բան մը
յափշտակէ , գրաւը ետ չտայ , ու
իր աչքերը կուռքերուն վերցընե-
13 լով՝ պղծութիւն գործէ , Վաշ-
խով տայ , ու տոկոսիք առ-
նէ . անիկայ պիտի ապրի՞ . պիտի
չապրի . անիկայ աս բոլոր գար-
շութիւնները ընելուն համար , ան-
շուշտ պիտի մեռնի . անոր արիւ-
նը իր վրան պիտի ըլլայ ։
14 Եւ թէ որ անիկայ որդի ծնանի ,
ու անիկայ իր հօրը ըրած բոլոր
մեղքերը տեսնելով՝ վախնայ ու ա-
15 նոնց համեմատ չընէ . Լեռներու
վրայ չուտէ , ու իր աչքերը դէպ 'ի
Իսրայէլի տանը կուռքերուն չվեր-
ցընէ , իր դրացիին կնիկը չպղծէ ,
16 Եւ մարդու մը զրկանք չընէ , գրա-
ւը չպահէ , ու բռնութեամբ բան
մը չյափշտակէ , իր հացը քաղցա-
ծին տայ , ու մերկը հանդերձով
17 ծածկէ , Աղքատին նեղութիւն
ընելէն իր ձեռքը ետ քաշէ , վաշխ
ու տոկոսիք չառնէ , իմ դատաս-
տաններս 'ի գործ դնէ , ու իմ օ-
րէնքներուս մէջը քալէ . անիկայ
իր հօրը անօրէնութեանը համար
պիտի չմեռնի . անիկայ անշուշտ
18 պիտի ապրի ։ Եւ անոր հայրը՝
որովհետև զրկանք ըրաւ , ու իր
եղբօրմէն բռնութեամբ բան յա-
փշտակեց , և աղէկ չեղածը ըրաւ
իր ժողովուրդին մէջ , ահա անի-
կայ իր անօրէնութեանը մէջ պիտի
մեռնի ։
19 Եւ դուք կ'ըսէք թէ՝ Ինչո՞ւ հա-
մար որդին իր հօրը անօրէնութիւ-
նը չկրեր ։ Որովհետև որդին իրա-
ւունք ու արդարութիւն ըրաւ , և
իմ բոլոր օրէնքներս պահեց ու զա-
նոնք 'ի գործ դրաւ , անշուշտ պի-
20 տի ապրի ։ Այն անձը որ մեղք կը
գործէ՝ անիկայ պիտի մեռնի . Որ-
դին հօրը անօրէնութիւնը պիտի
չկրէ , ու հայրը որդւոյն անօրէնու-
թիւնը պիտի չկրէ . Արդարին ար-
դարութիւնը իր վրայ պիտի ըլլայ ,
ու ամբարշտին ամբարշտութիւնը
21 իր վրայ պիտի ըլլայ ։ Եւ թէ որ
ամբարիշտը իր գործած բոլոր
մեղքերէն դառնայ , ու իմ բոլոր
օրէնքներս պահէ , և իրաւունք ու
արդարութիւն ընէ , անիկայ ան-
շուշտ պիտի ապրի , պիտի չմեռնի ։
22 Անոր ըրած բոլոր յանցանքները
իրեն դէմ պիտի չյիշուին . հապա
անիկայ իր ըրած արդարութեամ-
23 բը պիտի ապրի ։ Միթէ ես բնաւ
ամբարշտին մեռնիլը կ'ուզե՞մ՝ կ'ը-
սէ Տէր Եհովան . չէ՞ որ կ'ուզեմ
որ անիկայ իր ճամբայէն դառնայ
24 ու ապրի ։ Բայց թէ որ արդարը
իր արդարութենէն դառնայ , ու
ամբարշտին ըրած բոլոր գարշու-
թիւններուն պէս անօրէնութիւն
ընէ , պիտի ապրի՞ . Անոր ըրած
բոլոր արդարութիւնը պիտի չյի-
շուի . անիկայ իր ըրած յանցան-
քովը , ու գործած մեղքովը՝ ա-
նոնցմով պիտի մեռնի ։
25 Եւ դուք կ'ըսէք թէ՝ Տէրոջը

Ն. Ք. Գ. Զ.
594

— Հմր 24։
— Հմր 31։
Լ Հմր 14։
Մ Հմր 25։
Բ Գլ. Է. 3։ ԼԳ. 20։
Յ Մատ. Դ. 2։ Յայտ. Բ. 5։
Ե Եր. Ձեզի խոստովանութեան
— Եփե. Դ. 22. 23։
Ե Երեմ. ԼԲ. 39։ Գլ. ԺԱ. 19։ ԼԶ. 26։
Ի Եր. Դ. Ըրէք.
Ե Ողբ. Դ. 33։ Հմր 23։ Գլ. ԼԳ. 11։ Բ Պետ. Գ. 9։

— Գլ. ԻԶ. 17։ ԻԵ. 2։
Է Եր. Վերջու
Բ Հմր 6։ Գ Թագ. ԻԳ. 31. 32։
Է Դ Թագ. ԻԴ. 33։ Բ Մն. ԼԶ. 4։ Երեմ. ԻԲ. 11. 12։
Դ Դ Թագ. ԻԴ. 34։
Ի Երեմ. ԻԲ. 13—17։

ճամբան ուղիղ չէ. հիմա մտիկ
ըրէք՝ ով Իսրայէլի տունը. միթէ
իմ ճամբաս ուղիղ չէ. չէ՞ որ ձեր
26 ճամբան ուղիղ չէ։ —Երբոր ար-
դարը իր արդարութենէն դառ-
նայ, ու անօրէնութիւն ընէ, և
անոր մէջը մեռնի, անիկայ իր ը-
րած անօրէնութեանը համար կը
27 մեռնի։ Ու երբոր *ամբարիշտը
իր ըրած ամբարշտութենէն դառ-
նայ, և իրաւունք ու արդարու-
թիւն ընէ, անիկայ իր անձը պիտի
28 ապրեցնէ։ Որովհետև Լանիկայ
ուշադրութիւն ըրաւ, ու իր ըրած
բոլոր յանցանքներէն ետ դարձաւ,
անշուշտ պիտի ապրի, պիտի չմեռ-
նի։
29 Մ Բայց Իսրայէլի տունը կ՚ըսէ
թէ՝ Տէրոջը ճամբան ուղիղ չէ.
ով Իսրայէլի տունը՝ միթէ ի՞մ
ճամբաներս ուղիղ չեն. չէ՞ որ ձեր
30 ճամբաները ուղիղ չեն։ ԲԱնոր
համար ով Իսրայէլի տունը՝ ձեզմէ
ամէն մէկը իր ճամբաներուն համե-
մատ պիտի դատեմ՝ կ՚ըսէ Տէր
Եհովան. Յդարձի եկէք, ու ձեր
բոլոր յանցանքներէն ետ դար-
ձէք. որպէս զի անօրէնութիւ-
նը Եձեր կորստեանը պատճառ
31 չըլլայ։ —Ձեր ըրած բոլոր յան-
ցանքները ձեր վրայէն նետեցէք.
և ձեզի Ենոր սիրտ ու նոր հոգի
ԻստացԷք. քանզի ինչո՞ւ մեռնիք՝
32 ով Իսրայէլի տունը. ԵՎասն զի
մեռնողին մեռնիլը չեմ ուզեր կ՚ը-
սէ Տէր Եհովան. ուստի դարձէք.
ու ապրեցէք։

ԳԼ. ԺԹ

1 Մարգարէն Իսրայէլի իշխաններուն վրայ կ՚ող-
բայ՝ նմանցընելով զանոնք փոսի մէջ բռնուած
առիւծի կորիւններու. 10 նաև Երուսաղէմի
վրայ կ՚ողբայ՝ նմանցընելով զանիկայ փճացած
որթի մը։

1 Ու դուն՝ —Իսրայէլի իշխաններուն
2 վրայ ողբ Էըրէ. Ու ըսէ. Քու
մայրդ ի՞նչ է. մատակ առիւծ մըն
է, որ առիւծներու մէջ կը պառկի
ու իր կորիւնները առոյգ առիւծ-
3 ներու մէջ կը մեծցնէ։ Եւ անի-
կայ իր կորիւններուն մէկը մեծ-
ցուց. —Բ անիկայ առոյգ առիւծ
եղաւ, և յափշտակութիւն ընել
4 սորվեցաւ, —մարդ կ՚ուտէր։ Եւ
անոր վրայօք ազգերը լսեցին. ա-
նիկայ անոնց փոսին մէջը բռնուե-
ցաւ. ու զանիկայ կարթերով Է Ե-
5 գիպտոսի երկիրը տարին։ Ու
երբոր անիկայ տեսաւ որ դադար
առնելու կը սպասէ. յոյսը կտրեցաւ
և Դ իր կորիւններէն մէկ ուրիշը ա-
ռաւ. ու զանիկայ առոյգ առիւծ
6 ըրաւ։ Ի Եւ անիկայ առիւծներու
մէջ պտըտող նաւոյգ առիւծ ե-
ղաւ, ու յափշտակութիւն ընել
7 սորվեցաւ, —մարդ կ՚ուտէր։ Եւ
անոնց ‖պալատները գիտցաւ, ու
անոնց քաղաքները կործանեց. և
անոր մռնչելուն ձայնէն, երկիրը
իր լիութեամբը սարսափեցաւ։
8 Է Ու շրջակայ գաւառներէն անոր
վրայ ազգեր ելան. և անոր դէմ
իրենց ցանցը տարածեցին. —Ըա-
նոնց փոսին մէջը բռնուեցաւ։
9 Ի Եւ զանիկայ կարթերով վանդա-
կի մէջ դրին, ու զանիկայ Բաբե-
լոնի թագաւորին տարին, —զա-
նիկայ բերդը դրին. որպէս զի անոր
ձայնը մէյմըն ալ Ժ Իսրայէլի լեռ-
ներուն վրայ չլսուի։
10 Քու մայրդ քու §նմանութիւ-
նովդ՝ ջուրերու քով տնկուած էոր-
թի պէս է, որ շատ ջուրերուն
պատճառաւը՝ Լպտղատու ոստերով
11 լեցուն եղաւ։ Եւ անիկայ զօ-
րաւոր շառաւիղներ ունեցաւ՝ իշ-
խանաց գաւազաններու համար.
ու իր Էհասակը խիտ ճիւղերուն
մէջէն բարձրացաւ. և իր բարձրու-
թեամբը ու բարունակներուն շա-
12 տութեամբը երևցաւ։ Բայց ա-
նիկայ բարկութեամբ խլուեցաւ,
ու գետինը ձգուեցաւ. և Ժ արևե-
լեան հովը անոր պտուղը չորցուց.
անոր զօրաւոր շառաւիղները կոտ-
րեցան, ու չորցան. Ի զանոնք
13 կրակը կերաւ։ Ու հիմա անապա-
տի մը մէջ, չոր ու անջուր տեղ մը
14 տնկուեցաւ։ ԼԵւ անոր ոստե-
րուն մէկ շառաւիղէն կրակ ելաւ,
—անոր պտուղը կերաւ. և անոր
վրայ՝ իշխանի գաւազանի համար՝
զօրաւոր շառաւիղ մը չմնաց։ ՀԱ-
սիկայ ողբ է, ու ողբի տեղ պիտի
ըլլայ։

ԳԼ. Ի

1 Ըստուած չուզեր պատասխան տալ Իսրայէլի
ծերերուն 5 կը ստորագրէ անոնց ապստամ-
բութիւնը որ ըրեր էին Եգիպտոսի մէջ, 10
անապատին մէջ. 27 ու իրենց երկրին մէջ. 33
կը խոստանայ զանոնք մէկտեղ ժողվել աւե-
տարանին միջոցովը. 45 կը ցուցընէ Երուսա-
ղէմի կործանումը՝ զանիկայ անտառ անուանե-
լով։

1 Ու եղաւ որ եօթներորդ տարին
հինգերորդ ամսուն տասներորդ
օրը՝ Տէրոջը հարցընելու համար
—Իսրայէլի ծերերէն մարդիկներ ե-
կան և իմ առջևս նստան
2 Ու Տէրոջը խօսքը ինծի եղաւ ը-
3 սելով. Որդի մարդոյ՝ Իսրայէլի
ծերերուն հետ խօսէ ու անոնց
ըսէ. Տէր Եհովան այսպէս կ՚ըսէ
Միթէ դուք ինծի հարցընելո՞ւ ե-
կաք. ես կենդանի եմ՝ որ Բ ձեզի
պատասխան պիտի չտամ՝. կ՚ըսէ
4 Տէր Եհովան. Միթէ Գ անոնց դա-

Ն. Ք. Գ. Զ.
594

Ն Հմր 3։
‖ Կամ՝ որբևարիները
Է Դ Թագ. ԻԴ. 2։
Ը Հմր 4։
Ի Բ Մն. ԼԶ. 6։ Երեմ. ԻԲ. 18։
Ժ Եզեկ. Զ. 2։
§ Կամ՝ արեանդ մէջ
Է Գլ. ԺԷ. 6։
Լ Բ Օր. Ը. 7—9։
Է Գլ. ԼԱ. 3։ Դան. Դ. 11։
Ժ Գլ. ԺԷ. 10։ Ովս. ԺԳ. 15։
Լ Դատ. Թ. 15։ Տես Դ Թագ. ԻԴ. 20։ Գլ. ԺԷ. 18։
Հ Ողբ. Դ. 20։

Իրր 593

— Գլ. Ը. 1։ ԺԴ. 1։
Բ Հմր 31։ Գլ. ԺԴ. 3։
Է Եր. Ձեզմէ պիտի չհարցուիմ,
Գ Գլ. ԻԲ. 2։ ԻԳ. 36։

Ն. Ք. Ա. Ք. ԻՌ 593

ա Գլ. ԺԶ. 2։
բ Ել. Զ. 7։ Բ Օր. Է. 6։
* Կամ՝ երդում ըրի. նմն. Ել. Զ. 8։
գ Ել. Գ. 8։ Դ. 31։ Բ Օր. Դ. 34։
դ Ել. Ի. 2։
ե Ել. Գ. 8, 17։ Բ Օր. Ը. 7-9։ Երեմ. ԼԲ. 22։
զ Սաղ. ԽԸ. 2։ Հմր 15։ Դան. Ը. 9։ ԺԱ. 16, 41։ Զաք. Է. 14։
† Կամ՝ հոգացեր էի։
է Բ Մն. ԺԵ. 8։
ը Գլ. ԺԸ. 31։ Ղեւ. ԺԷ. 7։ ԺԸ. 3։ Բ Օր. ԻԹ. 16, 17, 18։ Յես. ԻԴ. 14։
թ Գլ. Է. 8։ Հմր 13, 21։
ժ Տես Ել. ԼԲ. 12։ Թուոց ԺԴ. 13, [illegible]։ Բ Օր. Թ. 28։ Հմր 14, 22։ Գլ. ԼԴ. 21, 22։
ի Ել. ԺԳ. 18։
լ Բ Օր. Դ. 8։ Նեեմ. Թ. 13, 14։ Սաղ. ՃԺԷ. 19, 20։
խ Ղեւ. ԺԸ. 5։ Հմր 13, 21։ Հռով. Ժ. 5։ Գաղ. Գ. 12։
ծ Ել. Ի. 8։ ԼԱ. 13, [illegible]։ Բ Օր. Ե. 12։ Նեեմ. Թ. 14։
կ Թուոց ԺԴ. 22։ Սաղ. ՀԸ. 40։ ՂԵ. 8, 9, 10։
հ Հմր 16, 21։ Առակ. Ա. 25։
ձ Ել. ԺԶ. 27։
ղ Թուոց ԺԴ. 29։ ԻԶ. 65։ Սաղ. ՃԶ. 23։
ճ Հմր 9, 22։
մ Թուոց ԺԴ. 28։ Սաղ. ՂԵ. 11։ ՃԶ. 26։
յ Հմր 6։

տաստան պիտի ընե՞ս, դատաստան
պիտի ընե՞ս՝ որդի՛ մարդոյ. ա Անոնց
հայրերուն պղծութիւնները անոնց
5 գիտցուր, Ու անոնց ըսէ. Տէր
Եհովան այսպէս կ'ըսէ. Այն օրը՝ որ
բ Իսրայէլը ընտրեցի, և Յակոբին
տանը սերունդին * իմ ձեռքս վեր-
ցուցի", ու Եգիպտոսի երկրին մէջ
գ անոնց յայտնուեցայ, և իմ ձեռքս
անոնց վերցնելով, ըսի թէ՝ դ Ձեր
6 Տէր Աստուածը ես եմ. Այն օրը
իմ ձեռքս անոնց վերցուցի, ե որ
զանոնք Եգիպտոսի երկրէն՝ այն
կաթ ու մեղր բղխող, ու զ ամէն
երկիրներուն պարծանքը եղող եր-
կիրը հանեմ, որն որ անոնց համար
7 † պատրաստեր էի. Ու անոնց ըսի.
Ամէն մարդ իր աչքերուն է գարշու-
թիւնները ը թող մէկդի ձգէ. ու
ը Եգիպտոսի կուռքերովը մի՛ պղծ-
ուիք. ես եմ ձեր Տէր Աստուածը։
8 Բայց անոնք ինծմէ ապստամբե-
ցան, և չուզեցին ինծի մտիկ ընել,
ու մէկը չձգեցին՝ ամէն մէկը իր
աչքերուն գարշութիւնները, ու
Եգիպտոսի կուռքերը չթողուցին.
ան ատենը ըսի որ՝ թ իմ սրտմտու-
թիւնս անոնց վրայ թափեմ, ու
Եգիպտոսի երկրին մէջ իմ բար-
կութիւնս անոնց վրայ կատարեմ։
9 ժ Բայց ես ըրի իմ անուանս համար,
որ չըլլայ թէ պղծուի այն ազգերուն
առջին՝ որոնց մէջը անոնք կը գըտ-
նուէին, և որոնց առջևը ես անոնց
յայտնուեցայ, երբոր անոնք Ե-
գիպտոսի երկրէն հանեցի։
10 Եւ ի զանոնք Եգիպտոսի երկրէն
հանեցի, ու զանոնք անապատը
11 բերի. լ Եւ իմ օրէնքներս խ անոնց
տուի, ու իմ դատաստաններս ա-
նոնց գիտցուցի, խ որ մարդ անոնց-
մով կ'ապրի, թէ որ զանոնք կա-
12 տարէ։ Եւ իմ ծ շաբաթներս ալ
անոնց տուի, որ իմ ու անոնց մէջ-
տեղը նշան ըլլան. որպէս զի գիտ-
նան թէ ես եմ Տէրը՝ որ զանոնք կը
սրբեմ։
13 Բայց Իսրայէլի տունը անապա-
տին մէջ կ ինծմէ ապստամբեցաւ.
իմ օրէնքներովս չքալեցին, ու հ իմ
դատաստաններս մերժեցին, որ մարդ
անոնցմով կ'ապրի, թէ որ զանոնք
կատարէ, և իմ շաբաթներս մեծա-
պէս ձ պղծեցին. անոր համար ըսի
որ՝ իմ սրտմտութիւնս անոնց վրայ
թափեմ ղ անապատին մէջ, ու զա-
14 նոնք սպառեմ։ ճ Բայց ես ըրի իմ
անուանս համար, որ չըլլայ թէ
պղծուի այն ազգերուն առջին՝ որոնց
15 առջևը զանոնք հանեցի։ Նաև
մ անապատին մէջ իմ ձեռքս ա-
նոնց վերցուցի, որ զանոնք չտանիմ
այն կաթ ու մեղր բղխող, ու յ ամէն
երկիրներուն պարծանքը եղող եր-
16 կիրը, որ անոնց տուեր էի, ն Քան-
զի իմ դատաստաններս մերժեցին,
ու իմ օրէնքներովս չքալեցին, և
իմ շաբաթներս պղծեցին. վասն
զի շ անոնց սիրտը իրենց կուռքե-
17 րուն ետևէն կ'երթար։ ո Բայց իմ
աչքս անոնց խնայեց, որ զանոնք
չկորսնցընեմ. ուստի անապատին
մէջ զանոնք չսպառեցի։
18 Եւ անապատին մէջ անոնց որդի-
ներուն ըսի. Ձեր հարցը կանոն-
ներովը մի՛ քալէք, ու անոնց սո-
վորութիւնները մի՛ պահէք, և
անոնց կուռքերովը մի՛ պղծուիք.
19 Ես եմ Տէրը ձեր Աստուածը. չ իմ
օրէնքներովս քալեցէք, ու իմ
դատաստաններս պահեցէք, ու
20 զանոնք 'ի գործ դրէք. պ Եւ իմ
շաբաթներս սուրբ պահեցէք. ու
անոնք իմ ու ձեր մէջտեղը նշան
ըլլան. որպէս զի գիտնաք թէ՝ ես
եմ Տէրը ձեր Աստուածը։
21 Բայց ջ անոնց որդիներն ալ ինծմէ
ապստամբեցան. իմ օրէնքներովս
չքալեցին, ու իմ դատաստաններս
կատարելու ուշադրութիւն չըրին,
ռ որ մարդ անոնցմով կ'ապրի, թէ
որ զանոնք կատարէ. և իմ շաբաթ-
ներս պղծեցին. ուստի ըսի որ՝ ս իմ
սրտմտութիւնս անոնց վրայ թա-
փեմ, ու անապատին մէջ իմ բար-
կութիւնս անոնց վրայ կատարեմ։
22 վ Սակայն իմ ձեռքս քաշեցի, ու
տ ըրի իմ անուանս համար, որ չըլ-
լայ թէ պղծուի այն ազգերուն առ-
ջին՝ որոնց առջևը զանոնք հանեցի։
23 Նաև անապատին մէջ իմ ձեռքս
անոնց վերցուցի, որ ր զանոնք ազ-
գերու մէջ ցրուեմ, ու զանոնք եր-
կիրներու մէջ ցիրուցան ընեմ,
24 ց Վասն զի իմ դատաստաններս 'ի
գործ չըրին, ու իմ օրէնքներս մեր-
ժեցին, և իմ շաբաթներս պըղ-
ծեցին. ու ւ անոնց աչքերը իրենց
հարցը կուռքերուն ետևէն եղաւ։
25 Ուստի փ ես ալ անանկ օրէնքներ
տուի անոնց՝ որ բարի չէին, ու ա-
նանկ դատաստաններ, որ անոնց-
26 մով չէին կրնար ապրիլ։ Եւ զա-
նոնք իրենց ընծաներովը պղծեցի,
[illegible] որ ք ամէն ար-
գանդ բացողը կրակէ անցընէին, որ-
պէս զի զանոնք կորսնցընեմ, որ
օ գիտնան թէ ես եմ Տէրը։
27 Անոր համար՝ որդի՛ մարդոյ, Իս-
րայէլի տանը խօսէ՛, ու անոնց ըսէ.
Տէր Եհովան այսպէս կ'ըսէ. Ձեր
հայրերը ասով ալ ինծի դէմ յան-
ցանք ընելով. զիս նախատեցին։
28 Վասն զի երբոր զանոնք տարի այն
երկիրը, որն որ անոնց տալու հա-
մար ձեռքս վերցուցեր էի, հոն

Ն. Ք. Ա. Ք. 593

ն Հմր 13, 24։
շ Թուոց ԺԵ. 39։ Սաղ. ՀԸ. 37։ Ամով. Ե. 25, 26։ Գործ. Է. 42, 43։
ո Սաղ. ՀԸ. 38։
չ Բ Օր. Ե. 32, 33։ Զ. Է. Ը. Ժ. ԺԱ. ԺԲ։
պ Հմր 12։ Երեմ. ԺԷ. 22։
ջ Թուոց ԻԵ. 1, 2։ Բ Օր. Թ. 23, 24։ ԼԱ. 27։
ռ Հմր 11, 13։
ս Հմր 8, 13։
վ Սաղ. ՀԸ. 38։ Հմր 17։
տ Հմր 9, 14։
ր Ղեւ. ԻԶ. 33։ Բ Օր. ԻԸ. 64։ Սաղ. ՃԶ. 27։ Երեմ. ԺԵ. 4։
ց Հմր 13, 16։
ւ Տես Գլ. Զ. 9։
փ Տես Սաղ. ՁԱ. 12։ Հմր 39։ Հռով. Ա. 24։ Բ Թես. Բ. 11։
ք Դ Թագ. ԺԷ. 17։ ԻԱ. 6։ Բ Մն. ԻԸ. 3։ ԼԳ. 6։ Երեմ. ԼԲ. 35։ Գլ. ԺԶ. 20, 21։
օ Գլ. Զ. 7։

Ն. Ք. ԳՓ. 593

ր Ես. կէ. 5. Ա. Գլ. գ. 13. ի Գլ. իզ. 19.
ւ Հմր 26.
ե Հմր 3.
է Գլ. ժա. 5.
ը Երեմ. իա. 5.
թ Երեմ. բ. 9. 35. Գլ. ժէ. 20.
ժ Տես Թու. ժդ. 21. 22. 23. 28. 29.
ի Ղև. իէ. 32. Երեմ. լգ. 13.
լ Գլ. լդ. 17. 20. Մատ. իե. 32. 33.
խ Երեմ. իգ. 14.
ծ Գլ. գ. 7. ժե. 7. իգ. 49.
կ Դատ. ժ. 14. Ամով. ա. 12. Ամով. դ. 4.
հ Եսա. ա. 13. Գլ. իգ. 38. 39.

ր ամէն բարձր բլուրը, ու ամէն տե-
րեւախիտ ծառը տեսնելով, հոն
իրենց զոհերը մատուցին, և իրենց
բարկութիւն գրգռող ընծաները
հոն տարին, ու իրենց ծ անուշահոտ
խունկերը հոն ծխեցին, և իրենց
թափելու նուէրները հոն մատու-
29 ցին։ Ու անոնց ըսի. Ի՞նչ է աս
բարձր տեղը՝ որ դուք հոն կ'երթաք.
և անոր անունը մինչև աս օրս Բարձր
տեղ կ'ըսուի։
30 Անոր համար Իսրայէլի տանը ը-
սէ. Տէր Եհովան այսպէս կ'ըսէ.
Դուք որ ձեր հայրերուն ճամբուն
մէջ կը պղծուիք, և անոնց զար-
շութիւններուն՝ հետևելով պոռնը-
31 կութիւն կ'ընէք, Ու ձեր ընծա-
ները մատուցանելով, ու ձեր տը-
ղաքը կրակէ անցընելով, ձեր բո-
լոր կուռքերովը կը պղծուիք մինչև
աս օրս. Ուրեմն ես ձեզի պատաս-
խան պիտի տամ, ով Իսրայէլի
տունը. Ես կենդանի եմ՝ կ'ըսէ
Տէր Եհովան, որ ձեզի պատասխան
32 պիտի չտամ։ Եւ ձեր սրտին
խորհուրդը ամենևին պիտի չկա-
տարուի, որ կ'ըսէք թէ՝ Մենք
փայտ ու քար պաշտելով, հեթա-
նոսներուն պէս՝ երկիրներուն ազ-
գատոհմներուն պէս պիտի ըլլանք։
33 Ես կենդանի եմ՝ կ'ըսէ Տէր Եհո-
վան, որ անշուշտ ձեր վրայ՝ զօրա-
ւոր ձեռքով, ու երկընցած բա-
զուկով, ու թափուած բարկու-
թիւնով թագաւորութիւն պիտի
34 ընեմ։ Եւ զօրաւոր ձեռքով, ու
երկընցած բազուկով, և թափուած
բարկութիւնով ձեզ ժողովուրդ-
ներէն պիտի հանեմ, ու ձեզ պի-
տի ժողվեմ ան երկիրներէն՝ ուր որ
35 դուք ցրուեցաք։ Եւ ձեզ ժողովըր-
դոց անապատը պիտի տանիմ, ու
հոն ձեզի հետ երես երեսի դատ պի-
36 տի վարեմ։ Ինչպէս որ Եգիպտոսի
երկրին անապատին մէջ ձեր հայ-
րերուն հետ դատ վարեցի, այնպէս
ալ ձեզի հետ դատ պիտի վարեմ՝
37 կ'ըսէ Տէր Եհովան։ Եւ ձեզ գա-
ւազանին տակէն պիտի անցընեմ,
ու ձեզ ուխտին կապին տակը պի-
38 տի մտցընեմ։ Եւ ապստամբները
ու ինծի դէմ յանցաւոր եղողները
ձեզմէ պիտի զատեմ. զանոնք ի-
րենց պանդխտութեան երկրէն պի-
տի հանեմ. ու անոնք Իսրայէլի
երկիրը պիտի չմտնեն. ու պիտի
գիտնաք թէ ես եմ Տէրը։
39 Եւ դուք՝ ով Իսրայէլի տունը՝
Տէր Եհովան այսպէս կ'ըսէ. Գա-
ցէք, ասկէ ետև ալ ամէն մէկերնիդ
ձեր կուռքերուն ծառայութիւն
ըրէք, քանի որ դուք ինծի մտիկ
չէք ըներ. Բայց իմ սուրբ անունս
ձեր ընծաներովը ու ձեր կուռքերովը
40 մի՛ պղծէք։ Վասն զի իմ սուրբ
լեռանս վրայ, Իսրայէլին բարձր
լեռանը վրայ, կ'ըսէ Տէր Եհովան,
բոլոր Իսրայէլի տունը՝ ամէնը իրենց
երկրին մէջ բոլորովին՝ հոն ինծի ծա-
ռայութիւն պիտի ընեն. հոն զա-
նոնք պիտի հաճիմ. և ձեր պատա-
րագները, ու ձեր ընծաներուն ե-
րախայրիները, ձեր բոլոր սուրբ
բաներովը՝ հոն պիտի փնտռեմ։
41 Երբոր ձեզ ազգերէն հանեմ, ու
ձեզ ժողվեմ ան երկիրներէն, ուր
որ դուք ցրուած էք, անուշահոտ
խունկով ձեզի պիտի հաճիմ, և ձեր
մէջը՝ ազգաց աչքերուն առջև սուրբ
42 պիտի ըլլամ։ Ու երբոր ձեզ Իս-
րայէլի երկիրը տանիմ, այսինքն ան
երկիրը՝ որն որ ձեր հայրերուն տա-
լու համար ձեռքս վերցուցի, պի-
43 տի գիտնաք թէ ես եմ Տէրը։ Եւ
հոն պիտի յիշէք ձեր ճամբանե-
րը, ու ձեր բոլոր գործքերը՝ որոնց-
մով պղծուեցաք. և ձեր ըրած բո-
լոր չարութիւններուն համար՝
44 դուք ձեզմէ պիտի զզուիք։ Ու
պիտի գիտնաք թէ ես եմ Տէրը,
երբոր ձեզի այսպէս ընեմ իմ ա-
նուանս համար, ու չէ՛ թէ ձեր չար
ճամբաներուն, ու ձեր ապականած
վարմունքին համեմատ, ով Իսրա-
յէլի տունը, կ'ըսէ Տէր Եհովան։
45 Եւ Տէրոջը խօսքը ինծի եղաւ՝
46 ըսելով. Որդի մարդոյ՝ երեսդ
դէպ 'ի հարաւ շիտկէ, ու դէպ 'ի
հարաւ խօսէ, ու հարաւային դաշ-
տին անտառին վրայ մարգարէու-
47 թիւն ըրէ. Եւ հարաւային ան-
տառին ըսէ. Տէրոջը խօսքը մտիկ
ըրէ. Տէր Եհովան այսպէս կ'ըսէ.
Ահա ես քու մէջդ կրակ պիտի բը-
ռընկցընեմ, և քու մէջդ եղած ա-
մէն կանանչ ծառը, ու ամէն չոր
ծառը պիտի ուտէ. բռընկած բոցը
պիտի չմարի. ու անով հարաւէն
մինչև հիւսիս ամէն կողմերը պիտի
48 այրին։ Եւ ամէն մարմին պիտի
տեսնէ, թէ ես Տէրս զանիկայ բը-
ռընկցուցի. ու անիկայ պիտի չը-
49 մարի։ Ան ատենը ես ըսի. Ո՛հ,
Տէր Եհովայ. անոնք ինծի համար
կ'ըսեն. Չէ՞ որ առակներ
կը խօսի։

Ն. Ք. ԳՓ. 593.

ձ Եսա. բ. 2. 3. Գլ. ժէ. 23. Միք. դ. 1.
ղ Ես. կզ. 7. Կ. 7. Զաք. ը. 20. Ա. Մաղ. գ. 4. Հռով. ժբ. 1.
ճ Եփես. ե. 2. Փիլ. դ. 18.
մ Գլ. ժա. 17. լդ. 13. լզ. 24.
յ Հմր 38. 44. Գլ. լզ. 23. լթ. 23.
ն Գլ. ժզ. 61.
շ Ղև. իզ. 39. Գլ. զ. 9. Ովս. ե. 15.
ո Հմր 38. Գլ. իդ. 24.
չ Գլ. լզ. 22.
պ Գլ. զ. 2. իա. 2.
ջ Երեմ. իա. 14.
ռ Ղուկ. իգ. 31.
ս Գլ. իա. 4.
վ Եբր. երեսները

## ԳԼ. ԻԱ

1 Եզեկիէլ հառաչանքի օրինակով Երուսաղէմի դէմ մարգարէութիւն կ'ընէ. 8 կը նախաձայնէ ան սրած ու փայլուն սուրը՝ 18 որ Երուսաղեմի դէմ. 25 Իսրայէլի թագաւորութեանը դէմ. 28 և Ամմոնացւոց դէմ պատրաստուած էր։

1 Եւ Տէրոջը խօսքը ինծի եղաւ՝ ը-
2 սելով. ա Որդի մարդոյ՝ երեսդ
դէպ 'ի Երուսաղէմ շիտկէ, ու

ա Գլ. ի. 46.

Ն. Ք. ՉՔ. 593

սուրբ տեղերուն խօսէ՛ , ու Իսրա-
յէլի երկրին մարգարէութիւն ըրէ ,
3 Եւ Իսրայէլի երկրին ըսէ՛ . Տէրը
այսպէս կ՚ըսէ . Ահա ես քեզի դէմ
եմ , ու իմ սուրս իր պատեանէն
պիտի հանեմ , և [բ]արդարը ու ամ-
4 բարիշտը քեզմէ պիտի կտրեմ ։ Ո-
րովհետև արդարը ու ամբարիշտը
քեզմէ պիտի կտրեմ , անոր համար
[գ]հարաւէն մինչև հիւսիս ամէն մարմ-
նոյ դէմ՝ իմ սուրս իր պատեա-
5 նէն պիտի քաշուի ։ Եւ ամէն մար-
մին պիտի գիտնայ՝ թէ ես Տէրս իմ
սուրս իր պատեանէն հաներ եմ .
անիկայ [դ]մէյմըն ալ ետ պիտի չը-
6 դառնայ ։ [ե]Ու դուն՝ որդի՛ մարդոյ՝
հեծէ՛ . մէջքը կոտրածի պէս դառ-
նութեամբ անոնց աչքերուն առ-
7 ջևը հեծէ՛ ։ Ու երբոր քեզի ըսեն՝
թէ ինչո՞ւ կը հեծես , ան ատենը
ըսես . Գուժին համար . վասն զի
կու գայ . և ամէն սիրտ պիտի հա-
լի , և [զ]ամէն ձեռք պիտի թուլ-
նայ , ու ամէն հոգի պիտի մարի , և
ամէն ծունկ ջուրի պէս պիտի ըլ-
լայ . ահա կու գայ , ու պիտի կա-
տարուի՝ կ՚ըսէ Տէր Եհովան ։
8 Դարձեալ Տէրոջը խօսքը ինծի
9 եղաւ՝ ըսելով . Որդի՛ մարդոյ՝
մարգարէացի՛ր , ու ըսէ՛ . Տէրը
այսպէս կ՚ըսէ . Ըսէ՛ որ՝ [է]Սուրը ,
սուրը սրուեցաւ , ու նաև ողորկե-
10 ցաւ ։ Մեծ կոտորած ընելու հա-
մար սրուեցաւ . փայլելու համար
ողորկեցաւ . հիմա մենք ուրախա-
նա՞նք . իմ որդւոյս գաւազանը
11 ամէն փայտը կ՚անարգէ ։ Բայց
ինքը ողորկելու տուաւ զանիկայ ,
որ ձեռքով բռնուի . այս սուրը
սրուած է ու ողորկուած է , որ զա-
նիկայ սպաննողին ձեռքը տայ ։
12 Աղաղակէ՛ ու ողբա՛ որդի՛ մարդոյ .
քանզի անիկայ իմ ժողովուրդիս
վրայ՝ Իսրայէլի բոլոր իշխաններուն
վրայ պիտի ըլլայ . իմ ժողովուր-
դիս վրայ՝ սուրի պատճառաւ վախեր
պիտի ըլլայ . անոր համար [ը][illegible]
13 ազդրիդ զա՛րկ ։ Վասն զի [թ]փորձը
եղաւ . ու ի՞նչ պիտի ըլլայ , թէ
որ ան անարգող գաւազանը ալ
14 չըլլայ՝ կ՚ըսէ Տէր Եհովան ։ Եւ
դուն՝ որդի՛ մարդոյ՝ մարգարէու-
թիւն ըրէ , ու [ի]ձեռքերդ իրարու
զա՛րկ . և սուրը՝ սպաննուածներուն
սուրը իրեք անգամ պիտի կրկ-
նուի . մեծամեծաց վիրաւորներուն
սուրը ասիկայ է , որ *անոնց բոլոր-
15 տիքը պաշարեց" ։ Սիրտերը նուա-
ղելու համար , ու սրտայթները
շատնալու համար՝ *անոնց բոլոր
դռներուն վրայ սուրին վախը դրի .
աւա՜ղ , [լ]անիկայ փայլելու համար
շինուեցաւ . մորթելու համար

բ Յոբ. թ. 22 ։
գ Գլ. ի. 47 ։
դ Ես. խե. 23 ; ծե. 11 ։
ե Ես. իբ. 4 ։
զ Գլ. է. 17 ։
է բ Օր. լբ. 41 ; Հմր 15, 28 ։
ը Երեմ. լա. 19 ։
թ Յոբ. թ. 23 ; բ Կոր. ը. 2 ։
ժ Հմր 27 ։
ի Թուոց. իդ. 10 ; Հմր 17 ; Գլ. զ. 11 ։
* Կամ՝ զանոնք խոցեց ։
լ Հմր 10, 28 ։

16 սրուեցաւ ։ Ինքզինքդ ժողվէ՛ .
քու աջ կամ ձախ կողմդ՝ ուր որ
17 երեսդ դարձած է , զա՛րկ ։ Ու ես
ալ [ծ]ձեռքերս իրարու պիտի զար-
նեմ , և [կ]իմ սրտմտութիւնս պիտի
հանգչեցնեմ . ես Տէրս խօսեցայ ։
18 Եւ Տէրոջը խօսքը ինծի եղաւ՝
19 ըսելով . Որդի՛ մարդոյ՝ դուն քեզի
երկու ճամբայ պատրաստէ , որ
Բաբելոնի թագաւորին սուրը գայ .
անոնց երկուքն ալ մէկ երկրէ պի-
տի ելլեն . ու մէկ տե՛ղ մը ընտրէ ,
քաղաքին ճամբուն գլուխը ընտրէ ։
20 Ճամբա՛յ պատրաստէ , որ [հ]Ամմոնի
որդւոցը Ռաբբային վրայ , և Յու-
դայի մէջ եղող պարսպաւոր Ե-
րուսաղէմին վրայ սուր գայ ։
21 Վասն զի Բաբելոնի թագաւորը
ճամբուն բաժանումին վրայ՝ երկու
ճամբուն գլուխը կայնեցաւ , որ
հմայութիւն ընէ . անիկայ իր նե-
տերը երերցուց , թերափիմներուն
22 հարցուց , լերդին նայեցաւ ։ Անոր
աջ ձեռքին մէջ հմայութիւն կար
Երուսաղէմի համար , որ [ձ]մեքենա-
ներ դնեն , պատերազմի մէջ բե-
րաննին բանան , ու [ղ]աղաղակով
ձայն վերցնեն , դռներու դէմ
[ճ]մեքենաներ դնեն , հողաբլուր
կանգնեն , ու մարտկոց շինեն ։
23 Բայց ասիկայ անոնց աչքերուն
առջին սնոտի հմայութեան մը պէս
պիտի ըլլայ . քանզի անոնց [մ]երդում-
ներ ըրեր էին . բայց անիկայ իրենց
անօրէնութիւնը պիտի յիշեցնէ ,
որպէս զի բռնուին ։
24 Անոր համար Տէր Եհովան այս-
պէս կ՚ըսէ . Որովհետև դուք ձեր
անօրէնութիւնը յիշեցուցիք , երբ-
որ ձեր յանցանքները յայտնուե-
ցան , ու բոլոր գործքերնուդ մէջ
ձեր մեղքերը երևցան , զանոնք յի-
շեցնելնուդ համար՝ ձեռքով պի-
25 տի բռնուիք ։ Եւ դուն [ռ]ո՛վ պիղծ
ու ամբարիշտ՝ իշխան Իսրայէլի ,
[ս]որ քու օրդ հասեր է , ու ան-
օրէնութեանդ ժամանակին վախ-
26 ճանը , Տէր Եհովան այսպէս կ՚ըսէ .
Խոյրը վերցո՛ւր , ու թագը հանէ՛ .
ասիկայ այսպէս չըլլար . [տ]ցածը
բարձրացո՛ւր , ու բարձրը ցածցո՛ւր ։
27 Զանիկայ տակնուվրայ , տակնու-
վրայ , տակնուվրայ պիտի ընեմ .
[ւ]ու ալ պիտի չըլլայ , մինչև որ գայ
անիկայ՝ որուն իրաւունքն է , ու
անոր պիտի տամ ։
28 Եւ դուն՝ որդի՛ մարդոյ՝ մարգա-
րէացի՛ր , ու ըսէ . [ց]Ամմոնի որ-
դւոցը համար , ու անոնց նախա-
տանացը համար Տէր Եհովան այս-
պէս կ՚ըսէ . ու ըսես . [փ]Սուրը՝ սու-
րը քաշուած է , ու մորթելու հա-
մար ողորկուած է , [ք]որ իր փայլման-

Ն. Ք. ՉՔ. 593
ծ Գլ. ժբ. 17 ։
կ Հմր 14 ; Գլ. իբ. 13 ։ Գլ. ե. 13 ։
հ Երեմ. խթ. 2 ; Գլ. իե. 5 ; Ամով. ա. 14 ։
ձ Գլ. դ. 2 ։
ղ Երեմ. ծա. 14 ։
ճ Գլ. դ. 2 ։
մ Գլ. ժէ. 13, 15, 16, 18 ։
ռ Բ Մն. լզ. 13 ; Երեմ. ծբ. 2 ; Գլ. ժէ. 19 ։
ս Հմր 29 ; Գլ. լե. 5 ։
տ Գլ. ժէ. 24 ; Ղուկ. ա. 52 ։
ւ Ծն. խթ. 10 ; Հմր 13 ; Ղուկ. ա. 32, 33 ; Յով. ա. 49 ։
ց Երեմ. խթ. 1 ; Գլ. իե. 2, 3, 6 ; Սոփ. բ. 8, 9, 10 ։
փ Հմր 9, 10 ։
ք Կամ՝ խնամք շատ ուտելու փայլի ։

29 ըը հատցընէ" ։ Երբոր քեզի համար
ունայն տեսիլքներ կը տեսնեն , և
սուտ հմայութիւններ կ'ընեն , որ
քեզ սպաննուելու ամբարիշտնե-
րուն պարանոցին վրայ բերեն , ո-
րոնց օրը հասեր է , անոնց անօրէ-
նութեանը ժամանակին վախճանը ։
30 Զանիկա իր պատեանը դարձը-
նե՞մ . քեզ՝ քու ստեղծուած տե-
ղըդ , ու քու ծննդեանդ երկրին
31 մէջ պիտի դատեմ . Եւ քու
վրադ իմ բարկութիւնս պիտի
թափեմ . քու վրադ իմ սրտմը-
տութեանս կրակովը պիտի փչեմ ,
ու քեզ բարբարոս մարդիկներուն՝
ապականելու վարպետ եղողներուն
32 ձեռքը պիտի տամ ։ Հրոյ ճարակ
պիտի ըլլաս . քու արիւնդ երկրին
մէջտեղը պիտի ըլլայ . դուն պի-
տի չյիշուիս , վասն զի ես Տէրս
խօսեցայ ։

## ԳԼ . ԻԲ

1 Երուսաղեմի բնակչացը գործած մեղքերուն ցուցակը ։ 18 Աստուած կ'ուզէ զանոնք այրել իբրև կղկղանք իր հալոցին մէջ ։ 23 Մարգարէներուն , քահանաներուն , իշխաններուն ու ժողովուրդին միօրինակ ապականութիւնը ։

1 Նու Տէրոջը խօսքը ինծի եղաւ՝ ը-
2 սելով . Ու դուն՝ որդի՛ մարդոյ՝
այս արիւնահեղ քաղաքին դա-
տաստան պիտի ընե՞ս , դատաստան
պիտի ընե՞ս . ուրեմն անոր բոլոր
պղծութիւնները իրեն գիտցուր ,
3 Ու ըսէ , Տէր Եհովան այսպէս
կ'ըսէ . Ո՛վ քաղաք՝ որ քու մէջդ
արիւն կը թափես , որպէս զի քու
ժամանակդ գայ , և քու անձդ
պղծելու համար՝ քեզի դէմ կուռ-
4 քեր կը շինես , Դուն՝ քու թա-
փած արիւնովդ յանցաւոր եղար ,
ու շինած կուռքերովդ պղծուե-
ցար , և քու օրերդ մօտեցուցիր ,
ու քու տարիներուդ հասար . Ա-
նոր համար քեզ ազգերուն՝ նա-
խատինք , ու ամէն երկիրներուն՝
5 ծաղր ըրի ։ Քեզի մօտ
եղողները , ու քեզմէ հեռու եղող-
ները քեզ ծաղր պիտի ընեն , ով
վատահամբաւ ու աղմկալից քա-
ղաք ։
6 Ահա քու մէջդ Իսրայէլի իշ-
խանները՝ ամէն մէկը իր բազուկո-
վը՝ արիւն թափելու համար կայ-
7 ներ են ։ Քու մէջդ հայրը ու
մայրը անարգեցին . քու մէջդ
օտարականին բռնութիւն ըրին .
քու մէջդ որբին ու որբևարիին
8 զրկանք ըրին ։ Իմ սուրբ բա-
ներս արհամարհեցիր . և իմ շա-
9 բաթներս պղծեցիր ։ Քու մէջդ
բանսարկու մարդիկներ եղան ա-
րիւն թափելու համար , ու քու
մէջդ լեռներու վրայ կերան , և քու
մէջդ եղեռնագործութիւն ըրին ։
10 Քու մէջդ հօրը մերկու-
թիւնը յայտնեց . քու մէջդ դաշ-
տանի պատճառով անմաքուր ե-
11 ղող կնիկը բռնադատեցին ։ Նաև
մէկը իր դրացիին կնկանը հետ
պղծութիւն ըրաւ , ու մէկը ե-
ղեռնագործութիւն ըրաւ՝ իր հար-
սը պղծելով , և քու մէջդ ուրիշ
մըն ալ իր քոյրը՝ իր հօրը աղջիկը
12 բռնադատեց ։ Քու մէջդ արիւն
թափելու համար կաշառք առին .
վաշխ ու տոկոսիք առիր , և բըռ-
նութիւն ընելով քու դրացիներէդ
բան վաստըկեցար ագահութեամբ ,
ու զիս մոռցար՝ կ'ըսէ Տէր Եհո-
13 վան ։ Ուստի ահա քու ըրած
ագահութեանդ , ու քու մէջդ
եղած արիւնահեղութեանը համար
14 ձեռքերս իրարու զարկի ։ Մի-
թէ քու սիրտդ կրնա՞յ դիմանալ ,
կամ թէ ձեռքերդ կրնա՞ն ուժով-
նալ այն օրերը՝ որ ես քեզի հատու-
ցում պիտի ընեմ . Ես Տէրս խօսե-
15 ցայ , ու պիտի կատարեմ ։ Եւ
քեզ ազգերու մէջ պիտի ցրուեմ ,
ու քեզ երկիրներու մէջ ցիրու-
ցան պիտի ընեմ , և քու պղծու-
թիւնդ քեզմէ պիտի հատցընեմ ։
16 Ու դուն քեզմէ պիտի պղծուիս
ազգաց աչքերուն առջևը , ու
պիտի գիտնաս թէ ես եմ Տէրը ։
17 Եւ Տէրոջը խօսքը ինծի եղաւ՝
18 ըսելով . Որդի՛ մարդոյ՝ Իսրայէլի
տունը ինծի կղկղանքի պէս եղաւ .
ամէնը հալոցի մէջ՝ պղինձի , անա-
գի , երկաթի ու կապարի պէս՝ ար-
19 ծաթի կղկղանք եղան ։ Անոր
համար Տէր Եհովան այսպէս կ'ը-
սէ . Որովհետև ամէնքդ կղկղանքի
պէս եղաք , անոր համար ահա ես
ձեզ Երուսաղեմի մէջ պիտի ժող-
20 վեմ ։ Ինչպէս որ արծաթը , ու
պղինձը , ու երկաթը , և կապարը ,
ու անագը հալոցի մէջ կը ժողվեն ,
ու անոր վրայ կրակը կը փչեն՝
զանիկա հալեցընելու համար , այն-
պէս ալ ձեզ իմ բարկութեամբս
ու սրտմտութեամբս պիտի ժող-
վեմ , և պիտի թողում , ու պիտի
21 հալեցընեմ ։ Եւ ձեզ մէկտեղ բե-
րելով՝ ձեր վրայ իմ բարկու-
թեանս կրակովը պիտի փչեմ . և
դուք անոր մէջը պիտի հալիք ։
22 Ինչպէս որ արծաթը հալոցին մէջը
կը հալի , դուք ալ անոր մէջը այն-
պէս պիտի հալիք . ու պիտի գիտ-
նաք՝ որ ես Տէրս իմ սրտմտու-
թիւնս թափեցի ձեր վրայ ։
23 Եւ Տէրոջը խօսքը ինծի եղաւ՝
24 ըսելով . Որդի՛ մարդոյ՝ անոր
ըսէ . Դուն անանկ երկիր մըն ես ,

Ն . Ք . ԴՔ . 593

Ը Գլ . ԺԲ . 24 ։ ԻԲ . 28 ։ Հմր 25 ։ Ցոբ . ԺԸ . 20 ։ Սաղ . ԼԷ . 13 ։ Երեմ . ԽԷ . 6 . 7 ։ Գլ . ԺԳ . 3 ։ Ծն . ԺԵ . 14 ։ Գլ . ԺԶ . 38 ։ Գլ . Է . 8 ։ ԺԴ . 19 ։ ԻԲ . 22 ։ Գլ . ԻԲ . 20 ։ 21 ։ Գլ . ԻԵ . 10 ։

Գլ . ԻԴ . 6 . 9 ։ Նաւ . Գ . 1 ։ Գլ . Ի . 4 ։ ԻԳ . 36 ։ Գլ . ԺԶ . 2 ։ Դ Թագ . Իա . 16 ։ Բ Օր . ԻԸ . 37 ։ Գ Թագ . Թ . 7 ։ Գլ . Ե . 14 ։ Դան . Թ . 16 ։ Ես . Ա . 23 ։ Միք . Գ . 1 . 2 . 3 ։ Սոփ . Գ . 3 ։ Բ Օր . ԻԷ . 16 ։ Ել . ԻԲ . 21 . 22 ։ Հմր 26 ։ Ղև . ԺԹ . 30 ։ Գլ . ԻԳ . 38 ։ Ել . ԻԳ . 1 ։ Ղև . ԺԹ . 16 ։ Գլ . ԺԸ . 6 . 11 ։

Ն . Ք . ԴՔ . 593

Ղև . ԺԸ . 7 . 8 ։ Ի . 11 ։ Ա Կոր . Ե . 1 ։ Ղև . ԺԸ . 19 ։ Ի . 18 ։ Գլ . ԺԸ . 6 ։ Ղև . ԺԸ . 20 ։ Ի . 10 ։ Բ Օր . ԻԲ . 22 ։ Երեմ . Ե . 8 ։ Գլ . ԺԸ . 11 ։ Ղև . ԺԸ . 15 ։ Ի . 12 ։ Ղև . ԺԸ . 9 ։ Ի . 17 ։ Ել . ԻԳ . 8 ։ Բ Օր . ԺԶ . 19 ։ ԻԷ . 25 ։ Ել . ԻԲ . 25 ։ Ղև . ԻԵ . 36 ։ Բ Օր . ԻԳ . 19 ։ Գլ . ԺԸ . 13 ։ Բ Օր . ԼԲ . 18 ։ Երեմ . Գ . 21 ։ Գլ . ԻԳ . 35 ։ Գլ . Իա . 17 ։ Տես Գլ . Իա . 7 ։ Գլ . ԺԵ . 24 ։ Բ Օր . Դ . 27 ։ ԻԸ . 25 . 64 ։ Գլ . ԺԲ . 14 . 15 ։ Գլ . ԻԳ . 27 . 48 ։ Սաղ . Թ . 16 ։ Գլ . Զ . 7 ։ Ես . Ա . 22 ։ Երեմ . Զ . 28 , 30 ։ Տես Սաղ . ՃԺԹ . 119 ։ Գլ . Իա . 31 ։ Գլ . Է . 8 ։ 33 ։ Հմր 31 ։

Ն. Ք. Գճ. 593

Հռվմ. գ. 9։

Տծ. Մաստ. իդ. 14։
Միք. գ. 11։ Սոփ. գ. 3, 4։
Մաղ. բ. 8։
Ղև. իբ. 2, ևն. ։ ա Թագ. բ. 29։
Ղև. ժ. 10։ Երեմ. ժե. 19։ Գլ. խդ. 23։
Ես. ա. 23։ Գլ. իր. 6։ Միք. գ. 2, 3, 9, 10, 11։ Սոփ. գ. 3։
Գլ. ժգ. 10։
Գլ. ժգ. 6, 7։ իա. 29։

Երեմ. ե. 26, 27, 28։ Գլ. ժը. 12։

Եւ. իբ. 21։ իդ. 9։ Ղև. ժթ. 33։ Գլ. իբ. 7։
Երեմ. ե. 1։
Գլ. ժգ. 5։
Սաղ. ճզ. 23։
Հմր 22։

Գլ. թ. 10։ ժա. 21։ ժզ. 43։

որ ոչ մաքրուած է, ոչ ալ բար-
կութեան օրը անձրեւով թըր-
25 ջուած ։ Անոր մէջը իր մարգա-
րէներուն դաւաճանութիւնը կայ,
որոնք աւար յափշտակող ու
մռնչող առիւծի պէս՝ հոգիներ
կ՚ուտեն. անոնք գանձ, ու պա-
տուական բաներ առին, ու ա-
նոր մէջը՝ անոր որբեւարիները շատ-
26 ցուցին ։ Անոր քահանաները իմ
օրէնքս աւրեցին, ու իմ սուրբ
բաներս պղծեցին. սուրբը պիղծէն
չորոշեցին, և անմաքուրին ու մա-
քուրին տարբերութիւնը չգիտցու-
ցին, և իրենց աչքերը իմ շաբաթ-
ներէս ծածկեցին, ու ես անոնց մէ-
27 ջը պիղծ սեպուեցայ ։ Անոր իշ-
խանները անոր մէջը յափշտակող
գայլերու պէս՝ արիւն թափելու
հոգի կորսնցընելու ետեւէ եղան,
որպէս զի ագահութեամբ բան
28 վաստըկին ։ Եւ անոր մարգարէնե-
րը ունայն տեսիլքներ տեսնելով,
ու անոնց սուտ գուշակութիւն ը-
նելով՝ զանոնք կիրով ծեփեցին, ու
ըսին. Տէր Եհովան այսպէս կ՚ըսէ,
29 թէև Տէրը խօսած չէր ։ Երկրին
ժողովուրդը մեծ զրկանք ըրին, ու
մեծ յափշտակութիւն ըրին, և աղ-
քատը ու տնանկը բռնադատեցին,
ու օտարականին անիրաւու-
30 թեամբ զրկանք ըրին ։ Եւ ա-
նոնցմէ մարդ մը փնտռեցի, որ
պարիսպ շինէ, ու խրամատին
մէջ իմ առջեւս կայնի երկրին հա-
մար, որ զանիկայ չաւրեմ. բայց
31 չգտայ ։ Ուստի իմ բարկութիւնս
անոնց վրայ թափեցի. զանոնք իմ
սրտմտութեանս կրակովը սպառե-
ցի. անոնց ճամբաները իրենց
գլուխը տուի՛ կ՚ըսէ Տէր Եհովան ։

ԳԼ. ԻԳ

1 Ոողայի ու Ոողիբայի պոռնկութիւնը ։ 22 Ոողիբային կրելու նեղութիւնը իր հոմանիներէն ։ 36 Մարգարէն կը յանդիմանէ անոնց երկուքին չնութիւնն ալ, և կը ցուցընէ անոնց դատաստանները ։

Երեմ. գ. 7, 8, 10։ Գլ. ժզ. 46։
Ղև. ժէ. 7։ Յես. իդ. 14։ Գլ. ի. 8։
Գլ. ժզ. 22։

Գլ. ժզ. 8, 20։

1 Դարձեալ Տէրոջը խօսքը ինծի ե-
2 ղաւ՝ ըսելով. Որդի մարդոյ՝
երկու կնիկներ կային մէկ մօր աղ-
3 ջիկներ. Ու անոնք Եգիպտոսի
մէջ պոռնկութիւն ըրին. իրենց
մանկութեան ատենը պոռնկու-
թիւն ըրին. անոնց ծիծերը հոն
ճնշուեցաւ, ու անոնց կուսու-
թեանը ստինքները հոն շօշա-
4 փուեցաւ ։ Եւ անոնց անունները՝
մեծինը Ոողայ, ու անոր քրոջը՝
Ոողիբայ էր. ու անոնք իմս ե-
ղան. և տղաքներ ու աղջիկներ
ծնան. (ու անոնց անունները՝
Ոողայ՝ Սամարիան է, ու Ոողիբայ
Երուսաղէմն է ։)

5 Եւ Ոողան՝ քանի որ իմս էր,
պոռնկութիւն ըրաւ, ու իր հոմա-
նիներուն սիրահարեցաւ, [illegible]
6 Ասորեստանցի դրացիներուն, կա-
պուտակ հագնող կուսակալներուն
ու նախարարներուն. ձի հեծնող
ձիաւորներուն՝ որոնք ամէնը շնոր-
7 հալի երիտասարդներ էին ։ Եւ
անիկայ պոռնկութիւն ըրաւ անոնց
հետ՝ [illegible]՝ Ասորեստանի ամէն
ընտիր որդւոցը հետ. նաև ան ա-
մենուն հետ՝ որոնց սիրահարեցաւ,
անոնց ամէն կուռքերովը պղծ-
8 ուեցաւ ։ Ու Եգիպտոսէն բերած
պոռնկութիւնները չթողուց. վասն
զի անոր մանկութեան ատենը ա-
նոր հետ պառկեր էին, և անոր
կուսութեանը ստինքները շօշափեր
էին, ու իրենց պոռնկութիւնը ա-
9 նոր վրայ թափեր էին ։ Անոր
համար զանիկայ իր հոմանիներուն
ձեռքը տուի, Ասորեստանի որ-
դւոցը ձեռքը՝ որոնց սիրահարած
10 էր ։ Անոնք անոր մերկութիւնը
յայտնեցին. անոր տղաքները ու
աղջիկները առին, ու զանիկայ՝ սրով
մեռցուցին. այսպէս անիկայ կնիկ-
ներուն մէջը անուանի եղաւ. և
անոր վրայ դատաստաններ ՚ի գործ
դրին ։
11 Ու երբոր անոր քոյրը Ոողիբան
տեսաւ, իր սիրահարելովը անկէ
աւելի ապականեցաւ. և իր պոռնը-
կութիւնները՝ իր քրոջը պոռնկու-
12 թիւններէն աւելի [illegible]. Ան իր
դրացիներուն սիրահարեցաւ, [illegible]
Ասորեստանի որդիներուն,
շքեղութեամբ հագուած կուսա-
կալներուն ու նախարարներուն, ձի
հեծնող ձիաւորներուն՝ որոնք ամէ-
նը շնորհալի երիտասարդներ էին ։
13 Եւ տեսայ որ պղծեցաւ. երկու-
14 քին ալ ճամբան մէկ եղաւ ։ Եւ
իր պոռնկութիւնները աւելցուց.
քանզի երբոր պատի վրայ նկա-
րուած մարդիկներ՝ նօթով նկա-
րուած Քաղդէացւոց պատկերները
15 տեսաւ, Որոնք մէջքերնին գօտի
կապած էին, և իրենց գլուխներուն
վրայ ներկուած խոյրեր ունէին,
ու ամէնը իշխաններու կերպարան-
քով էին, իրենց ծննդեան երկրին՝
Բաբելոնի որդւոցը՝ Քաղդէացւոց
16 նմանութեանը պէս, [illegible] իր
աչքերովը տեսածին պէս՝ անոնց
սիրահարեցաւ, և անոնց՝ Քաղ-
դէացւոց երկիրը դեսպաններ խըր-
17 կեց ։ Ու Բաբելոնի որդիքը անոր
հետ սիրոյ անկողինը մտան, և զա-
նիկայ իրենց պոռնկութիւններովը
պղծեցին. ու անիկայ անոնց հետ
պղծուեցաւ, ու [illegible] անոր հոգին
18 անոնցմէ զզուեցաւ ։ Եւ իր

Ն. Ք. Գճ. 593

Դ Թագ. ժե. 19։ ժզ. 7։ ժէ. 3։ Ովս. ը. 9։

Հմր 3։

Դ Թագ. ժէ. 3, 4, 5, 6, 23։ ժը. 9, 10, 11։
Գլ. ժզ. 37, 41։

Երեմ. գ. 8։
Երեմ. գ. 11։ Գլ. ժզ. 47, 51։

Դ Թագ. ժզ. 7, 10։ Բ Մն. իը. 16-23։ Գլ. ժզ. 28։
Հմր 6, 23։

Կամ՝ մեծ սալարուներ

Դ Թագ. իդ. 1։ Գլ. ժզ. 29։

Հմր 22, 28։

Ն. Ք. Զ. Ք. 593

պոռնկութիւնները յայտնեց, ու
իր մերկութիւնը բացաւ. ուստի
ˡիմ Հոգիս անկէ զատուեցաւ,
ինչպէս որ անոր քրոջմէն զատուեր
19 էր։ Այսպէս անիկայ իր պոռնը-
կութիւնները շատցուց. յիշելով
իր մանկութեան օրերը, ʰԵ-
գիպտոսի երկրին մէջ շնութիւն ը-
20 րած ժամանակը. Ու սիրահարե-
ցաւ անոնց տարփածուներուն, ʲո-
րոնց մարմինը էշերու մարմին է, ու
անոնց զօրութիւնը ձիերու զօրու-
21 թիւն է։ Եւ դուն նորէն քու
մանկութեանդ պղծագործութիւ-
նը ձեռք առիր, որ քու ման-
կութեանդ ծիծերուն ճմլուելով՝
ստինքներդ Եգիպտացիներէն շօ-
շափուեցաւ։
22 Անոր համար՝ ով Ողիբա, Տէր
Եհովան այսպէս կ'ըսէ. ⁿԱհա ես
քու վրադ պիտի արթընցընեմ քու
հոմանիներդ, որոնցմէ քու հոգիդ
զատուեցաւ, ու զանոնք ամէն կող-
23 մէն քու վրադ պիտի բերեմ Բա-
բիլոնի որդիքը, ու բոլոր Քաղ-
դէացիները, ᶜ*Փակուդը Սուէն,
ու Կուէն", և անոնց հետ Ասորես-
տանի բոլոր որդիքը ᵐամէնը շնոր-
հալի երիտասարդներ կուսակալ-
ներ, ու նախարարներ ամէնը ձի
հեծնող զօրագլուխներ ու անուանի
24 ձիաւորներ. Եւ անոնք զէնքերով,
կառքերով, ու անիւներով, ու
ժողովուրդներու բազմութիւնով
քու վրադ պիտի գան, և ամէն կող-
մէն քեզի դէմ՝ վահան, ասպար ու
սաղաւարտ պիտի դնեն. և դա-
տաստանը անոնց ձեռքը պիտի
տամ ու քեզ իրենց դատաստան-
25 ներովը պիտի դատեն։ Եւ իմ
նախանձս քեզի դէմ պիտի դնեմ.
ու քեզի հետ բարկութեամբ պի-
տի վարուին. քու քիթդ ու ա-
կանջներդ պիտի կտրեն. և քու մնա-
ցորդդ սրով պիտի իյնայ. անոնք
քու տղաքներդ ու աղջիկներդ պի-
տի առնեն. ու քու մնացորդդ
26 կրակով պիտի այրի։ ʲԵւ քու
հանդերձներէդ քեզ պիտի մերկա-
ցընեն ու քու պարծանացդ զար-
27 դերը պիտի առնեն։ Ու ⁿքեզմէ
պիտի դադրեցընեմ քու պղծա-
գործութիւնդ. ու ˢքու պոռնկու-
թիւններդ՝ որ Եգիպտոսի երկրէն
բերեր. Ու աչքերդ անոնց պիտի
չվերցընես, ու մէյմըն ալ Եգիպ-
տոսը պիտի չյիշես։
28 Քանզի Տէր Եհովան այսպէս
կ'ըսէ. Ահա ես քեզ պիտի մատ-
նեմ անոնց ձեռքը որոնք ᵒդուն
ատեցիր. և անոնց ձեռքը ˢորոնց-
29 մէ քու հոգիդ զատուեցաւ։ Եւ
անոնք քեզի հետ ատելութեամբ
պիտի վարուին, ու քու բոլոր
վաստակդ պիտի առնեն, և ᵖքեզ
մերկ ու անծածկոյթ պիտի թո-
ղուն. ու քու պոռնկութիւննե-
րուդ մերկութիւնը, քու պղծա-
գործութիւնդ ու պոռնկութիւնդ
30 պիտի յայտնուի։ ʲԱզգերուն
հետևելովդ՝ պոռնկութիւն ընելուդ
համար, և անոնց կուռքերովը
պղծուելուդ համար, աս բաները
31 քեզի պիտի ընեմ։ Դուն քու
քրոջդ ճամբան գացիր, ես ալ ա-
նոր ʳբաժակը քու ձեռքդ պիտի
32 տամ։ Տէր Եհովան այսպէս կ'ը-
սէ. Դուն քու քրոջդ խորունկ ու
լայն բաժակը պիտի խմես. ˢխաղք
ու խայտառակ պիտի ըլլաս. ան
33 բովանդակ շատ բան կ'առնէ. Դուն
արբեցութեամբ ու տրտմութեամբ
պիտի լցուիս. ապշութեան ու
զարմացման բաժակ մըն է քու
34 քրոջդ Սամարիային բաժակը. Ու
դուն ᵛզանիկայ պիտի խմես, ու
պիտի քամես, և անոր կտորները
պիտի †լզես, ու ստինքներդ պիտի
պատռտես. քանզի ես խօսեցայ՝
35 կ'ըսէ Տէր Եհովան. Անոր համար
Տէր Եհովան այսպէս կ'ըսէ. ʳԶիս
մոռնալուդ ու ˢկռնակիդ ետևը
նետելուդ համար. դուն ալ քու
պղծագործութիւնդ ու պոռնկու-
թիւններդ կրէ։
36 Եւ Տէրը ինծի ըսաւ. Որդի՛ մար-
դոյ՝ Ողային ու Ողիբային ʲդա-
տաստանը պիտի տեսնե՞ս. ուրեմն
ᵖանոնց պղծութիւնները իրենց
37 պատմէ՛։ Վասն զի շնութիւն ը-
րին, ու ᵠձեռքերնուն մէջը արիւն
կայ. և իրենց կուռքերովը շնու-
թիւն ըրին, ու ᵒիրենց ինծի ծնած
տղաքն ալ կրակէն անցուցին. որ ա-
38 նոնց կերակուր ըլլան։ Աս ալ ը-
րին ինծի. Նոյն օրը իմ սրբարանս
անմաքուր ըրին, ու ᶠիմ շաբաթ-
39 ներս պղծեցին։ Վասն զի երբոր
իրենց տղաքը իրենց կուռքերուն
զոհեցին, Նոյն օրը իմ սրբարանս
մտան՝ որ զանիկայ պղծեն. և ահա
40 ᵃիմ տանս մէջ այսպէս ըրին։ Ու
նաև հեռուէն գալու մարդիկներուն
լուր խրկեցիք. ᵇոր անոնց պատ-
գամաւորներ խրկուելուն պէս՝ ահա
անոնք եկան. և դուն անոնց հա-
մար ᶜլուացուեցար, ու ᵈաչքերուդ
վրայ ծարոյր դրիր, ու զարդերով
41 զարդարուեցար. Եւ պատուական
Տրաւմոցի վրայ նստար, որուն
առջևը պատրաստուած սեղան
կար, և ᵉիմ խունկս ու եղս անոր
42 վրայ դրիր։ Ու հոն ուրախութիւն
ընող բազմութեան ձայն կը լը-
սուէր. ու ան բազմաթիւ մար-
դիկներէն 'ի զատ՝ անապատէն

Լ Երեմ. զ. 8.
Հ Հմր 3.
Յ Գլ. ժզ. 26.
Ն Գլ. ժզ. 37 · Հմր 28.
Ճ Երեմ. ծ. 21.
* Կամ՝ Իշխաններ, Կառավարները ու ազնուականները.
Մ Հմր 12.
Յ Գլ. ժզ. 39.
Ն Գլ. ժզ. 41 · Իբ. 15.
Շ Հմր 3, 19.
Ո Գլ. ժզ. 37 · Չ Հմր 17.

Ն. Ք. Զ. Ք. 593
Պ Գլ. ժզ. 39 · Հմր 26.
Ջ Գլ. զ. 9.
Ռ Երեմ. իե. 15, 27.
Ս Գլ. իբ. 4, 5.
Վ Սաղ. կե. 8 · Եսա. ծա. 17.
† Կամ՝ կըրծես.
Ր Երեմ. բ. 32 · գ. 21 · ժգ. 25 · Գլ. իբ. 12.
Ց Թագ. ժդ. 9 · Նեեմ. թ. 26.
Ւ Գլ. ի. 4 · իբ. 2.
Փ Եսա. ծը. 1.
Ք Գլ. ժզ. 38 · Հմր 45.
Օ Գլ. ժզ. 20, 21, 36, 45 · ի. 26, 31.
Ֆ Գլ. իբ. 8.
Ա Դ Թագ. Թ. 4.
Բ Եսա. ծէ. 9.
Գ Հռութ. գ. 3.
Դ Դ Թագ. Թ. 30 · Երեմ. դ. 30.
Ե Եսթ. ա. 6 · Եսա. ծէ. 7.
Զ Առակ. է. 17 · Գլ. ժզ. 18, 19 · Ովսէ. բ. 8.

Ն․ Ք․ ՉՔ․ 593

զինեմոլ մարդիկներ բերուեցան , որոնք անոնց ձեռքերը՝ ապարանջաններ , ու անոնց գլուխները՝ պարծանաց թագեր կը դնէին ։
43 Եւ շնութեան մէջ պառաւածին վրայով ըսի . Հիմա ալ ասոր հետ
44 պոռնկութիւն պիտի ընե՞ն ։ Ու անոր քովը կը մտնէին . ինչպէս որ պոռնիկ կնկան քովը կը մտնեն , անանկ ալ Ոողային ու Ոողիբային՝ ան պղծագործ կնիկներուն քովը
45 կը մտնէին ։ Բայց արդար մարդիկները՝ ˸շնացող կնիկներուն դատաստանովը , ու արիւն թափող կնիկներուն դատաստանովը պիտի դատեն զանոնք . վասն զի անոնք շնացող կնիկներ են , ու ˸անոնց ձեռքերուն մէջը արիւն կայ ։
46 Քանզի Տէր Եհովան այսպէս կ'ըսէ . ըԱնոնց դէմ ժողովք պիտի հանեմ , և զանոնք նեղութեան ու յափշտակութեան պիտի մատնեմ ։
47 Ու ժողովքը զանոնք քարերով պիտի քարկոծեն , և զանոնք իրենց սուրերովը պիտի կտրեն . ˸անոնց տղաքները ու աղջիկները պիտի մեռցընեն , ու անոնց տուները կրակով
48 պիտի այրեն ։ Ու ˸երկրէն պղծագործութիւնը պիտի վերցընեմ , ˸որ ամէն կնիկները խրատուին , ու ձեր պղծագործութեանը
49 պէս չընեն ։ Եւ ձեր պղծագործութիւնը ձեր վրայ պիտի դնեն . ու դուք ˸ձեր կուռքերուն մեղքերը պիտի կրէք , ˸ու պիտի գիտնաք թէ ես եմ Տէր Եհովան ։

ՂՊ․ ԺԶ․ 38 ։
Ե Հմր 37 ։
Ը ԳԼ․ ԺԶ․ 40 ։
Թ Բ Մն․ ԻԴ․ 17․ 19 ։ ԳԼ․ ԻԴ․ 21 ։
Ժ ԳԼ․ ԻԲ․ 15 ։ Հմր 27 ։
Ի Բ Օր․ ԺԳ․ 11 ։ Բ Պետ․ Բ․ 6 ։
Լ Հմր 35 ։
Ե ԳԼ․ Ի․ 38․ 42․ 44 ։ ԻԵ․ 5 ։

## ԳԼ․ ԻԴ

1 Եռացող կաթսայի մը օրինակով , 6 կը ցուցուի Երուսաղեմի անհրաժեշտ կործանումը ։ 15 Եզեկիելին՝ իր կնկանը մահուանը համար սուգ չընելուն օրինակովը՝ 19 կը ցուցուի թէ Հրէից թշուառութիւնը չափազանց տրտմութեամբ պիտի ըլլայ ։

590

1 Եւ իններորդ տարին տասներորդ ամիսը՝ ամսուն տասներորդ օրը՝ Տէրոջը խօսքը ինծի եղաւ՝ ըսելով .
2 Որդի՛ մարդոյ՝ դուն քեզի աս օրուան անունը՝ բուն աս օրը գրէ . ˸Բաբիլոնի թագաւորը ˸բուն աս
3 օրս Երուսաղեմին մօտեցաւ ։ ˸Եւ ան ապստամբներուն տանը առակ խօսէ , ու անոնց ըսէ . Տէր Եհովան այսպէս կ'ըսէ . ˸Կաթսան դիր , ˸դիր , ու մէջն ալ
4 ջուր լեցուր ։ Անոր կտորները , ամէն աղէկ կտորները , ազդրը , և ուսը անոր մէ՛ջը ժողվէ . ˸ընտիր
5 ընտիր ոսկորներով լեցուր ։ Ոչխարներուն ընտիրները առ , ու ոսկորներն ալ տակը դիզէ . զանիկայ խիստ շատ եռացուր , այնպէս որ մէջի ոսկորներն ալ եփին ։

ա Գ Թագ․ ԻԵ․ 1 ։ Երեմ․ ԼԹ․ 1 ։ ԾԲ․ 4 ։
բ ԳԼ․ ԺԷ․ 12 ։
գ Տես Երեմ․ Ա․ 13 ։ ԳԼ․ ԺԱ․ 3 ։

6 Անոր համար Տէր Եհովան այսպէս կ'ըսէ . Վա՜յ ˸արիւնահեղ քաղաքին , ան կաթսային՝ որուն ժանգը իր մէջն է , ու ժանգը մէջէն ելած չէ . զանիկայ իր մէջի կտորներովը հանէ . ˸անոր վրայ վի-
7 ճակ չձգուի . Վասն զի անոր արիւնը իր մէջն է . զանիկայ չոր ապառաժի վրայ դրաւ . ˸զանիկայ գետնի վրայ չթափեց որ զանիկայ
8 հողով ծածկէ ։ Իմ սրտմտութիւնս հանելու , ու վրէժ առնելու համար , ˸անոր արիւնը չոր ապառա-
9 ժի վրայ դրի , որ չծածկուի ։ Անոր համար Տէր Եհովան այսպէս կ'ըսէ . ըՎա՜յ արիւնահեղ քաղաքին , ես ալ կրակին դէզը պիտի մեծցընեմ ։
10 Փայտերը շատցո՛ւր , կրակը բոցկցո՛ւր՝ որ միսը հալի , համեմներ ալ
11 դիր , ու ոսկորները այրին ։ Եւ ետքը պարապ ˸կաթսան կայծերուն վրայ դիր , որպէս զի պղինձը տաքնայ ու այրի , ու ˸մէջի պղծութիւնը հա-
12 լի , ու ժանգը հատնի ։ Անիկայ աշխատութիւնով ˸զիս յոգնեցուց . ու անոր շատ ժանգը իրմէն չելաւ .
13 անոր ժանգը կրակով ˸ելլայ ։ Քու անմաքրութեանդ մէջ պղծագործութիւն կայ . որովհետև քեզ *մաքրելու աշխատեցայ", ու դուն չմաքրուեցար . այսուհետև քու անմաքրութենէդ պիտի չմաքրուիս , ˸մինչև որ իմ բարկութիւնս քու
14 վրադ չիջեցընեմ ։ ˸Ես Տէրս խօսեցայ . ˸իմ խօսքս պիտի գայ , ու ˸զանիկայ պիտի կատարեմ . †պիտի չներեմ", ˸ու պիտի չխնայեմ , և պիտի չզղջամ . քու ճամբաներուդ , ու քու գործքերուդ համեմատ պիտի դատուիս՝ կ'ըսէ Տէր Եհովան ։
15 Եւ Տէրոջը խօսքը ինծի եղաւ՝
16 ըսելով . Որդի՛ մարդոյ՝ ահա ես հարուածով մը քու աչքերուդ ցանկութիւնը քեզմէ պիտի առնեմ . ու դուն չողբաս , ու չլաս , և քու
17 ˸արցունքդ չգայ ։ Լռութեամբ ըլլայ քու հեծութիւնդ , ˸մեռելի սուգ մի՛ ըներ . ˸քու ապարօշդ գլուխդ փաթթէ . ˸կօշիկներդ ոտքերդ հագիր , ու ˸շրթունքդ մի՛ ծածկեր , և մարդոց հացը մի՛ ուտեր ։
18 ˸Եւ առաւօտուն ժողովուրդին խօսեցայ . ու իրիկունը կնիկս մեռաւ . ու ˸առաւօտուն՝
19 ինծի հրամայուածը ըրի ։ Եւ ժողովուրդը ինծի ըսաւ . ˸Մեզի չե՞ս պատմեր թէ աս քու ըրածներէդ ի՞նչ ˸մենք ։
20 Ու ես անոնց ըսի . Տէրոջը խօս-
21 քը ինծի եղաւ՝ ըսելով . ˸Իսրայէլի տանը ըսէ . Տէր Եհովան այսպէս կ'ըսէ . ըԱհա ես իմ սրբարանս՝ ձեր

Ն․ Ք․ ՉՔ․ 590

Դ ԳԼ․ ԻԲ․ 3 ։ ԻԳ․ 37 ։ Հմր 9 ։
Ե Տես Բ Թագ․ Ը․ 2 ։ Յովէլ․ Գ․ 3 ։ Աբդ․ 11 ։ Նաւ․ Գ․ 10 ։
Զ Ղև․ ԺԷ․ 13 ։ Բ Օր․ ԺԲ․ 16․ 24 ։
Է Մատ․ Է․ 2 ։
Ը Հմր 6 ։ Նաւ․ Գ․ 1 ։ Ամբ․ Բ․ 12 ։
Թ ԳԼ․ ԻԲ․ 15 ։
* Եբր․ մաքրեցի ։
Ժ ԳԼ․ Ե․ 13 ։ Ը․ 18 ։ ԺԶ․ 42 ։
Ի Ա Թագ․ ԺԵ․ 29 ։
† Կամ՝ պիտի չձգեմ իմ ...
Լ ԳԼ․ Ե․ 11 ։
Ե Երեմ․ ԺԶ․ 5․ 6․ 7 ։
Ծ Տես ՂԵ․ Ժ․ 6 ։ Իա․ 10 ։
Կ Բ Թագ․ ԺԵ․ 30 ։
Հ Հմր 22 ։ Ղև․ ԺԳ․ 45 ։ Միք․ Գ․ 7 ։
Ձ ԳԼ․ ԺԲ․ 9 ։ ԻԷ․ 18 ։
Ղ Երեմ․ Է․ 14 ։ ԳԼ․ Է․ 20․ 21․ 22 ։

Ն․ Ք․ ՂԲ․
590

Սաղ․ ԻԷ․ 4։
Գլ․ ԻԴ․ 47։

Երեմ․ ԺԶ․ 6․ 7։ Հմր 17։

Յոբ․ ԻԷ․ 15։ Սաղ․ ՀԸ․ 64։

ՂՂ․ ԻՂ․ 39։ Գլ․ ԼԴ․ 10։

Ես․ Ի․ 3։ Գլ․ Դ․ 3։ ԺԲ․ 6․ 11։

Երեմ․ ԺԷ․ 15։ Յօհ․ ԺԴ․ 19։ ԺԴ․ 29։

Գլ․ Զ․ 7։ ԻԵ․ 5։

Հմր 21։

Գլ․ ԼԳ․ 21․ 22։

Գլ․ Գ․ 26։ 27։ ԻԹ․ 21։ ԼԳ․ 22։

Հմր 24։

զօրութեանը պարծանքը, ձեր ա-
չացը ցանկութիւնը, ու ձեր հո-
գւոյն խնայածը պիտի պղծեմ․ և
ձեր թողուցած տղաքներնիդ ու
աղջիկներնիդ սրով պիտի իյնան։
22 Եւ դուք իմ ըրածիս պէս պիտի
ընէք․ ձեր շրթունքները պիտի
չծածկէք, ու մարդոց հացը պիտի
23 չուտէք․ Ու ձեր ապարօշները գլ-
լուխներնիդ, և ձեր կօշիկները ոտ-
քերնիդ պիտի ըլլայ․ պիտի չող-
բաք, ու պիտի չլաք․ հապա ձեր
անօրէնութիւններովը պիտի մա-
շիք, և իրարու հետ պիտի հեծէք։
24 Ու Եզեկիէլը ձեզի նշան մըն է․
դուք անոր բոլոր ըրածին պէս պի-
տի ընէք․ ու երբոր ասիկայ ըլ-
լայ, պիտի գիտնաք թէ ես եմ
Տէր Եհովան։
25 Եւ դուն՝ որդի՛ մարդոյ՝ երբոր
ես անոնցմէ առնեմ անոնց զօրու-
թիւնը, անոնց պարծանաց ցնծու-
թիւնը, անոնց աչացը ցանկու-
թիւնը, ու անոնց հոգւոյն սիրած
26 տղաքները ու աղջիկները, Այն
օրը ազատուածը քեզի պիտի գայ,
և ականջներուդ պիտի պատմէ։
27 Այն օրը քու բերանդ պիտի բա-
ցուի ազատուածին, ու պիտի խօ-
սիս, և ալ համր չըլլաս․ ու դուն
անոնց նշան պիտի ըլլաս․ ու պի-
տի գիտնան թէ ես եմ Տէրը։

## ԳԼ․ ԻԵ

1 Աստուծոյ վրէժխնդրութիւնը Ամմոնացւոց դէմ․ 8 նաև Մովաբին ու Սէիրին դէմ, 12 Եդովմին 15 ու Փղշտացւոց դէմ․ որովհետև հրէից հետ արհամարհանօք վարուեցան։

Դպ․ Գ․ 2։ ԺԵ․ 2։

Երեմ․ ԽԹ․ 1, ԵՒ։ Գլ․ ԻԱ․ 28։ Ամով․ Ա․ 13։ Սոփ․ Բ․ 9։

Դատաւ․ ԺԱ․ 3։ Գլ․ ԻԶ․ 2։

1 Դարձեալ Տէրոջը խօսքը ինծի ե-
2 կաւ՝ ըսելով․ Որդի մարդոյ՝
երեսդ Ամմոնի որդիներուն դար-
ձուր․ ու անոնց վրայ մարգարէու-
3 թիւն ըրէ․ Եւ Ամմոնի որդւոցը
ըսէ՝ Տէր Եհովային խօսքը մտիկ
ըրէք․ Տէր Եհովան այսպէս կ՚ըսէ․
Որովհետև դուն՝ Վա՜շ ըսիր իմ
սրբարանիս վրայով, երբոր պղ-
ծուեցաւ, ու Իսրայէլի երկրին վը-
րայով, երբոր աւերակ եղաւ, և
Յուդայի տանը վրայով, երբոր
4 գերութեան գնաց․ Անոր համար
ահա ես քեզ արևելքի բնակիչնե-
րուն ժառանգութիւն կու տամ․
ու քու մէջդ իրենց գեղերը պիտի
հաստատեն, ու քու մէջդ իրենց
վրանները պիտի դնեն․ քու պը-
տուղներդ պիտի ուտեն, և քու
5 կաթդ պիտի խմեն։ Ու Ռաբբան
ուղտերու փարախ՝ և Ամմոնի որ-
դւոց երկիրը հօտերու մակաղատեղ
պիտի ընեմ․ ու պիտի գիտնաք
6 թէ ես եմ Տէրը։ Վասն զի Տէր
Եհովան այսպէս կ՚ըսէ․ Որովհետև

Գլ․ ԻԱ․ 20։

Ես․ ԺԷ․ 2։ ԼԲ․ 14։ Սոփ․ Բ․ 14․ 15։

Գլ․ ԻԴ․ 24։ ԻԳ․ 6։ ԻԵ․ 9։

դուն ծափ զարկիր, ու ոտքդ գե-
տինը զարկիր, ու Իսրայէլի երկրին
վրայ՝ քու հոգւոյդ բոլոր արհա-
7 մարհանօքը ուրախացար, Անոր
համար ահա ես իմ ձեռքս քու
վրադ պիտի երկընցընեմ, ու քեզ
ազգերուն յափշտակութիւն ըլլա-
լու պիտի տամ, և քեզ ժողովուրդ-
ներէն պիտի կտրեմ, ու քեզ եր-
կիրներուն մէջէն պիտի կորսընցը-
նեմ․ քեզ բնաջինջ պիտի ընեմ․
ու պիտի գիտնաս թէ ես եմ
Տէրը։
8 Տէր Եհովան այսպէս կ՚ըսէ․ Ո-
րովհետև Մովաբը ու Սէիրը ը-
սին, թէ Ահա Յուդայի տունը ա-
9 մէն ազգերուն պէս է․ Անոր համար
ահա ես Մովաբի սահմանը իր քա-
ղաքներէն՝ իր ծայրը եղող քաղաք-
ներէն, երկրին պարծանքը եղող
Բեթեսիմօթի, Բէէլմէոնի ու Կա-
րիաթեմի կողմէն պիտի բանամ
10 Արևելքի բնակիչներուն, որ Ամ-
մոնի որդւոցը վրայ գան․ ու ան եր-
կիրը անոնց ժառանգութիւն պիտի
տամ․ որպէս զի Ամմոնի որդիքը
11 ազգերուն մէջ չյիշուին։ Մովաբի
մէջ ալ դատաստաններ ՚ի գործ
պիտի դնեմ․ ու պիտի գիտնան
թէ ես եմ Տէրը։
12 Տէր Եհովան այսպէս կ՚ըսէ․ Ո-
րովհետև Եդովմը Յուդայի տանը
դէմ դնելով՝ վրէժ առաւ, և ան-
կէ վրէժ առնելով մեծ յանցանք
13 ըրաւ, Անոր համար Տէր Եհովան
այսպէս կ՚ըսէ․ Եդովմի վրայ ան-
շուշտ ձեռքս պիտի երկընցընեմ,
և մարդը ու անասունը անկէ պիտի
կտրեմ, և զանիկայ անապատ պի-
տի ընեմ Թեմանէն․ ու մինչև
14 Դեդանը սրով պիտի իյնան։ Եւ
իմ ժողովուրդիս Իսրայէլին ձեռ-
քովը՝ իմ վրէժխնդրութիւնս Ե-
դովմի վրայ պիտի կատարեմ․ ու
անոնք իմ սրտմտութեանս ու
բարկութեանս համեմատ պիտի ը-
նեն Եդովմի մէջ․ և իմ վրէժխնդ-
րութիւնս պիտի գիտնան՝ կ՚ըսէ
Տէր Եհովան։
15 Տէր Եհովան այսպէս կ՚ըսէ․ Ո-
րովհետև Փղշտացիք վրէժխնդ-
րութեամբ վարուեցան, ու հոգիի
արհամարհանօք վրէժ առին՝ հին-
աւուրց ատելութեամբ աւրելով,
16 Անոր համար Տէր Եհովան այսպէս
կ՚ըսէ․ Ահա ես իմ ձեռքս Փղշտա-
ցւոց վրայ պիտի երկընցընեմ, և
Քերեթիները պիտի կոտրեմ, ու
ծովեզերքը եղողներուն մնացորդը
17 բնաջինջ պիտի ընեմ․ Եւ անոնց
վրայ սրտմտութեանս յանդի-
մանութիւններովը մեծ վրէժխնդ-
րութիւններ պիտի կատարեմ․ ու

Ն․ Ք․ ՂԲ․
590

Յոբ․ ԻԷ․ 23։ Ողբ․ Բ․ 15։ Սոփ․ Բ․ 15։

Գլ․ ԼԶ․ 5։ Սոփ․ Բ․ 8․ 10։

Գլ․ ԼԵ․ 3։

Ես․ ԺԵ․ ԺԶ։ Երեմ․ ԽԸ․ 1, ԵՒ։ Ամով․ Բ․ 1։

Գլ․ ԼԵ․ 2․ 5․ 12։

Հմր 4։

Գլ․ ԻԱ․ 32։

Բ Մն․ ԻԸ․ 17։ Սաղ․ ՃԼԷ․ 7։ Երեմ․ ԽԹ․ 7, 8, ԵՒ։ Գլ․ ԼԵ․ 2, ԵՒ։ Ամով․ Ա․ 11։ Աբդ․ 10, ԵՒ։

Ես․ ԺԱ․ 14։ Երեմ․ ԽԹ․ 2։

Երեմ․ ԽԶ․ 20։ ԽԷ․ 1, ԵՒ։ Յովել․ Գ․ 4, ԵՒ։ Ամով․ Ա․ 6։

Բ Մն․ ԻԸ․ 18։

Սոփ․ Բ․ 4, ԵՒ։

Ա Թագ․ Լ․ 14։

Երեմ․ ԽԷ․ 4։

Գլ․ Ե․ 15։

Սաղ․ Թ․ 16։

Ն . Ք . ԳՃ . 587

լըռովին ամայի պիտի ըլլաս . ու
պիտի գիտնան թէ ես եմ Տէրը ։

## ԳԼ . ԼԶ

1 Իսրայէլի երկիրը կը մխիթարուի . լսելով հեթանոսաց կործանումը , որոնք ոխակալութեամբ կը փորուէին իրեն հետ . Տ և Աստուծոյ օրհնութիւնները՝ որ իրեն խոստացուեր էին ։ 16 Իսրայէլը մերժուած էր իր մեղքերուն համար . 21 և նորէն իր առջի վիճակին պիտի դառնար առանց իր արժանաւորութեանը ։ 25 Քրիստոսի թագաւորութեանը բարիքները ։

1 Ու դուն՝ որդի մարդոյ ⁻Իսրա-
յէլի լեռներուն մարգարէու-
թիւն ըրէ՝ ու ըսէ . Ո՛վ Իսրայէլի
լեռներ՝ Տէրոջը խօսքը մտիկ ը-
րէք . Տէր Եհովան այսպէս կ'ըսէ .
2 Որովհետև ԲԹշնամին ձեզի համար
ըսաւ . Վա՛շ՝ յաւիտենական բլուր-
ներն ալ ԳՄեզի ժառանգութիւն
3 եղան , Անոր համար մարգարէու-
թիւն ըրէ , ու ըսէ . Տէր Եհովան
այսպէս կ'ըսէ . Որովհետև ձեզ
աւրեցին , ու ամէն կողմէն կլլե-
ցին , այնպէս որ՝ մնացած ազգե-
րուն ժառանգութիւն ըլլաք .
Դու դուք լեզուանի մարդիկներուն
խօսքը , ու ժողովուրդին նախա-
4 տինքը եղաք . Անոր համար՝ ո՛վ
Իսրայէլի լեռներ՝ Տէր Եհովային
խօսքը մտիկ ըրէք . Տէր Եհովան
այսպէս կ'ըսէ լեռներուն ու բլուր-
ներուն , ձորերուն ու հովիտնե-
րուն , և ամայի եղած աւերակնե-
րուն , ու պարապ թողուած քա-
ղաքներուն՝ որոնք շրջակայ ազ-
գերուն մնացորդին Եյափշտակու-
թիւն ու Զնախատինք եղած են ։
5 Անոր համար Տէր Եհովան այսպէս
կ'ըսէ . Մնացած ազգերուն հա-
մար , ու բոլոր Եդովմին համար՝
Էանշուշտ իմ նախանձիս կրակովը
խօսեր եմ . վասն զի անոնք բոլոր
սրտի ուրախութեամբ , ու հոգիի
հպարտութեամբ Ըիմ երկիրս իրենց
ժառանգութիւն ըլլալու որոշեցին ,
որ զանիկայ աւարի պէս յափշտա-
կեն ։
6 Անոր համար Իսրայէլի երկրին
վրայ մարգարէութիւն ըրէ , և
լեռներուն , ու բլուրներուն , ձո-
րերուն , ու հովիտներուն ըսէ . Տէր
Եհովան այսպէս կ'ըսէ . Դուք Թազ-
գերէն նախատինք կրելնուդ հա-
մար , ահա ես իմ նախանձովս ու
7 իմ բարկութեամբս խօսեցայ ։ Ա-
նոր համար Տէր Եհովան այսպէս
կ'ըսէ . Ես Ժիմ ձեռքս վերցուցի՝
որ ձեր բոլորտիքը եղող ազգերը՝
իրենց անարգանքը իրենք պիտի կը-
8 րեն ։ Բայց դուք՝ ո՛վ Իսրայէլի
լեռներ՝ ձեր ոստերը պիտի երկնցը-
նէք , ու իմ ժողովուրդիս Իսրա-

ա Գլ . Զ . 2 . 3 ։
բ Գլ . ԻԵ . 3 ։ ԻԶ . 2 ։
գ Գլ . ԼԵ . 10 ։
դ Բ Օր . ԻԸ . 37 ։ Գ Թագ . Թ . 7 ։ Ողբ . Բ . 15 ։ Դան . Թ . 16 ։
ե Գլ . ԼԴ . 28 ։
զ Սաղ . ՀԹ . 4 ։
է Բ Օր . Դ . 24 ։ Գլ . ԼԸ . 19 ։
ը Գլ . ԼԵ . 10 . 12 ։
թ Սաղ . ՃԻԳ . 3 . 4 ։ Գլ . ԼԴ . 29 ։ Հմր 15 ։
ժ Գլ . Ի . 5 ։

Ն . Ք . ԳՃ . 587

յէլին համար ձեր պտուղները պի-
տի բերէք . վասն զի անոնք մօտե-
9 րըս պիտի գան ։ Քանզի ահա ես
ձեր կողմէն եմ , ու ձեզի պիտի
դառնամ . և դուք պիտի մշա-
կուիք , ու պիտի սերմանուիք .
10 Ու ձեր վրայ մարդիկներ՝ բոլոր Իս-
րայէլի տունը՝ ամէնը պիտի շատ-
ցընեմ . ու քաղաքները պիտի բը-
նակուին , և Իաւերակները պիտի
11 շինուին ։ Ու Լձեր վրայ մարդը ու
անասունը պիտի շատցընեմ . և ա-
նոնք պիտի շատնան , ու պտղաբեր
պիտի ըլլան . և ձեր առջի կացու-
թեանը պէս ձեզ պիտի բնակեցը-
նեմ , ու ձեր առջի վիճակէն աւելի
աղէկ պիտի ընեմ ձեզի . Խու պիտի
12 գիտնաք թէ ես եմ Տէրը ։ Ու ձեր
վրայ մարդիկներ՝ իմ ժողովուրդս
Իսրայէլը պիտի պտըտցընեմ . Ծու
անոնք քեզ պիտի ժառանգեն . և
դուն անոնց ժառանգութիւնը պի-
տի ըլլաս . ու մէյմըն ալ զանոնք
*պիտի չզրկես" ։
13 Տէր Եհովան այսպէս կ'ըսէ . Ո-
րովհետև ձեզի համար կ'ըսեն թէ՝
ԿԴուն մարդակեր երկիր մըն ես . քու
14 ազգերդ սպառեցիր . Անոր համար
մէյմըն ալ մարդ պիտի չուտես ,
ու մէյմըն ալ քու ազգերդ պիտի
չսպառես՝ կ'ըսէ Տէր Եհովան ։
15 ՀՈւ քու մէջդ մէյմըն ալ ազգերուն
նախատինքը լսել պիտի չտամ .
ու մէյմըն ալ ժողովուրդներուն
անարգանքը պիտի չկրես , և քու
ազգերդ մէյմըն ալ պիտի չսպա-
ռես՝ կ'ըսէ Տէր Եհովան ։
16 Ու Տէրոջը խօսքը ինծի եղաւ՝
17 ըսելով . Որդի մարդոյ՝ Իսրայէլի
տունը իրենց երկրին մէջ բնակե-
ցան , և Ձզանիկայ իրենց ճամբա-
յովը ու գործքերովը պղծեցին .
անոնց ճամբան իմ առջևս Ղդաշ-
տանաւոր կնկան անմաքրութեանը
18 պէս եղաւ ։ Ուստի իմ բարկու-
թիւնս անոնց վրայ թափեցի Ճան
արիւնին համար՝ որ իրենք թափե-
ցին երկրին վրայ , ու զանիկայ ի-
19 րենց կուռքերովը պղծեցին . Ու
Մզանոնք ազգերուն մէջ ցրուեցի ,
ու երկիրներուն մէջ ցիրուցան ե-
ղան . Յզանոնք իրենց ճամբուն ,
ու գործքերուն համեմատ դատեցի ։
20 Ու իրենց գացած ազգերուն մէջ
երթալնուն պէս Նիմ սուրբ ա-
նունս պղծեցին , երբոր իրենց հա-
մար ըսուեցաւ թէ՝ Ասոնք Եհովա-
յին ժողովուրդն են , ու անոր երկ-
21 րէն ելան ։ Սակայն ես խնայեցի
Շիմ սուրբ անուանս համար , որն
որ Իսրայէլի տունը իրենց մտած
ազգերուն մէջ պղծեցին ։
22 Անոր համար Իսրայէլի տանը ըսէ

ի Հմր 33 ։ Եսա . ԽԲ . 12 ։ Կա . 4 ։ Ամով . Թ . 14 ։
լ Երեմ . ԼԱ . 27 ։ ԼԳ . 12 ։
խ Գլ . ԼԵ . 9 ։ ԼԷ . 6 . 13 ։
ծ Երգ . 17 . Ճ ։
* Եբր . անզաւակ պիտի ընես ։
կ Թուոց . ԺԳ . 33 ։
հ Գլ . ԼԴ . 29 ։
ձ Ղևտ . ԺԸ . 25 . 27 . 28 ։ Երեմ . Բ . 7 ։
ղ Ղևտ . ԺԵ . 19 . Ճ ։
ճ Գլ . ԺԶ . 36 . 38 ։ ԻԳ . 37 ։
մ Գլ . ԻԲ . 15 ։
յ Գլ . Է . 3 ։ ԺԸ . 30 ։ ԼԹ . 24 ։
ն Տես Եսա . ԾԲ . 5 ։ Հռով . Բ . 24 ։
շ Գլ . Ի . 9 . 14 ։

ն․ ժ․ դՔ․ 587

որ՝ Տէր Եհովան այսպէս կ'ըսէ․
Չէ թէ ձեզի համար կ'ընեմ ասի-
կայ՝ ով Իսրայէլի տունը, ⁿ հապա
իմ սուրբ անուանս համար, որն որ
դուք ձեր մտած ազգերուն մէջ
23 պղծեցիք ։ Եւ սուրբ պիտի ընեմ
իմ մեծ անունս, որ ազգերուն մէջ
պղծուեցաւ, որն որ դուք անոնց
մէջը պղծեցիք․ ու ազգերը պիտի
գիտնան թէ ես եմ Տէրը, կ'ըսէ
Տէր Եհովան, երբոր անոնց աչքե-
րուն առջեւ՝ ո ձեր մէջը սրբուիմ ։
24 Եւ ո ձեզ ազգերէն պիտի առնեմ,
ու ամէն երկիրներէն ձեզ պիտի
ժողվեմ․ ու ձեզ ձեր երկիրը պի-
25 տի բերեմ․ Ք Եւ ձեր վրայ մաքուր
ջուր պիտի սրսկեմ, ու պիտի մաք-
րուիք․ ր ձեր բոլոր պղծութիւննե-
րէն, ու ձեր բոլոր կուռքերէն ձեզ
26 պիտի մաքրեմ․ Եւ ս ձեզի նոր սիրտ
պիտի տամ, ու ձեր ներսի դին նոր
հոգի պիտի դնեմ, և ձեր մարմին-
ներէն քարեղէն սիրտը պիտի հա-
նեմ, ու ձեզի մարմնեղէն սիրտ
27 պիտի տամ․ Եւ իմ ւ Հոգիս ձեր
ներսի դին պիտի դնեմ, ու ձեզի՝
իմ օրէնքներուս մէջ քալել պիտի
տամ, ու իմ իրաւունքներս պիտի
28 պահէք ու 'ի գործ դնէք․ փ Եւ ձեր
հայրերուն տուած երկրիս մէջ պի-
տի բնակիք, ք ու դուք ինծի ժո-
ղովուրդ պիտի ըլլաք, ես ալ ձեզի
29 Աստուած պիտի ըլլամ ։ Եւ ձ ձեր
բոլոր պղծութիւններէն ձեզ պիտի
ազատեմ, ո ու ցորենը պիտի կան-
չեմ, և զանիկայ պիտի շատցընեմ,
ու ե ձեր վրայ սով պիտի չբերեմ ։
30 ա Եւ ծառերուն պտուղը, ու արտե-
րուն բերքը պիտի շատցընեմ․ որ-
պէս զի մէյմըն ալ ազգերուն մէջ
31 սովի նախատինք չկրէք ։ Ու բ ձեր
դէշ ճամբաները, և անբարի գործ-
քերը պիտի յիշէք․ ու գ ձեր ան-
օրէնութեանցը համար, և ձեր պղ-
ծութեանցը համար դուք ձեր ան-
32 ձերէն պիտի զզուիք ։ ⁿ Չէ՛ թէ
ձեզի համար կ'ընեմ ասիկայ՝ կ'ըսէ
Տէր Եհովան, ձեզի յայտնի ըլլայ․
ձեր ճամբաներէն ամչցէ՛ք ու պատ-
կառեցէ՛ք՝ ով Իսրայէլի տունը ։
33 Տէր Եհովան այսպէս կ'ըսէ․ Այն
օրը՝ որ ձեր բոլոր անօրէնութիւն-
ներէն ձեզ մաքրեմ, քաղաքները
մարդաբնակ պիտի ընեմ․ բ ու աւե-
34 րակները պիտի շինուին ։ Եւ այն
ամայացած երկիրը՝ ամէն անցնողին
աչքերուն առջեւ ամայի ըլլալուն
35 տեղը՝ պիտի մշակուի ։ Ու պիտի
ըսեն․ Աս ամայացած երկիրը՝ գ Ե-
դեմի դրախտին պէս եղաւ․ և ա-
ւերակ, ամայի ու փլած քաղաքնե-
րը՝ պարսպաւոր ու մարդաբնակ ե-
36 ղան ։ Ու ձեր բոլորտիքը մնացած

ⁿ Սաղ․ ճզ․ 8 ։
ո Գլ․ ի․ 41 ։ իը․ 22 ։
ո Գլ․ լդ․ 13 ։ լէ․ 21 ։
Ք Եբր․ ժ․ 22 ։
ր Երեմ․ լգ․ 8 ։
ս Երեմ․ լբ․ 39 ։ Գլ․ ժա․ 19 ։
ւ Գլ․ ժա․ 19 ։ լէ․ 14 ։
փ Գլ․ իբ․ 25 ։ լէ․ 25 ։
ք Երեմ․ լ․ 22 ։ Գլ․ ժա․ 20 ։ լէ․ 27 ։
ձ Մատ․ ա․ 21 ։ Հռով․ ժա․ 26 ։
ո Տես Սաղ․ ճե․ 16 ։
ե Գլ․ լդ․ 29 ։
ա Գլ․ լդ․ 27 ։
բ Գլ․ զ․ 61, 63 ։
գ Ղե․ իզ․ 39 ։ Գլ․ զ․ 9 ։ ի․ 43 ։
ⁿ Օր․ թ․ 5 ։ Հմր 22 ։
բ Հմր 10 ։
գ Ես․ ծա․ 3 ։ Գլ․ իը․ 13 ։ Յովել․ բ․ 3 ։

ազգերը պիտի գիտնան՝ թէ ես Տէրս
փլածները կը շինեմ, ու ամայացած
երկիրը կը տնկեմ․ դ ես Տէրս խօսե-
ցայ, ու պիտի կատարեմ ։
37 Տէր Եհովան այսպէս կ'ըսէ․
Իսրայէլի ե տանը խնդրուածքը ալ
պիտի ընդունիմ", որ անոնց ասի-
կայ ընեմ․ անոնց մարդիկները զ հօ-
38 տի պէս պիտի շատցընեմ ։ Սուրբ
հօտին պէս՝ Երուսաղեմի հանդի-
սաւոր տօներուն հօտին պէս՝ աւ-
րած քաղաքները մարդոց հօտերով
այնպէս լեցուն պիտի ըլլան․ ու պի-
տի գիտնան թէ ես եմ Տէրը ։

ն․ ք․ դՔ․ իբբ 587

դ Գլ․ ժէ․ 24 ։ իբ․ 14 ։ լէ․ 14 ։
ե Եբր․ տունէն՝ ալ պիտի փնտռուիմ․ Տես Գլ․ ժդ․ 3 ։
զ Հմր 10 ։

## ԳԼ․ ԼԷ

1 Չորցած ոսկորներուն յարութիւն առնելովը ․ 11 Իսրայէլի մեռած յոյսը կը կենդանանայ ։ 15 Երկու փայտերուն միանալովը՝ 18 կը ցուցուի Իսրայէլին միաբանութիւնը Յուդային հետ ։ 20 Քրիստոսի թագաւորութեանը վըրայով խոստմունքներ ։

1 ա Տէրոջը ձեռքը իմ վրաս եղաւ, և
բ ւ Տէրը զիս Հոգիով՝ հանեց, ու
զիս դաշտին մէջը դրաւ․ և անիկայ
2 ոսկորներով լեցուն էր ։ Ու զիս
անոնց քովերէն պտըտցուց չուր-
ջանակի․ և ահա անոնք դաշտին
երեսին վրայ խիստ շատ էին, և ա-
հա անոնք խիստ չորցած էին ։
3 Ու ինծի ըսաւ․ Որդի մարդոյ՝
աս ոսկորները կրնա՞ն կենդանա-
նալ․ ու ըսի․ Ո՛վ Տէր Եհովայ՝
4 գ դուն գիտես ։ Եւ ինծի ըսաւ․
Աս ոսկորներուն վրայ մարգարէու-
թիւն ըրէ, ու անոնց ըսէ՝․ Ո՛վ
չորցած ոսկորներ՝ Տէրոջը խօսքը
մտիկ ըրէք․ այսպէս կ'ըսէ Տէր
5 Եհովան աս ոսկորներուն․ Ահա ես
դ ձեր մէջը հոգի պիտի դնեմ, ու
6 պիտի կենդանանաք․ Եւ ձեր վրայ
ջիղեր պիտի դնեմ, ու ձեզ միսով
պիտի պատեմ, ու ձեզ մորթով
պիտի ծածկեմ, և ձեր մէջը շունչ
պիտի դնեմ, ու պիտի կենդանա-
նաք․ և ե պիտի գիտնաք թէ ես
եմ Տէրը ։
7 Ու ես մարգարէութիւն ըրի ինչ-
պէս որ ինծի հրամայուեցաւ․ ու
մարգարէութիւն ըրածիս պէս՝ ձայն
մը եղաւ․ և ահա շարժում մը ե-
ղաւ․ ու ոսկորները իրարու մօտե-
8 ցան՝ ոսկորը իր ոսկորին ։ Եւ
տեսայ որ՝ ահա անոնք ջիղերով ու
միսով պատեցան, ու վրայէն մոր-
թով ծածկուեցան․ բայց անոնց
9 մէջը շունչ չկար ։ Այն ատենը ինծի
ըսաւ․ Շունչին մարգարէութիւն
ըրէ, մարգարէութիւն ըրէ՝ որդի
մարդոյ՝ ու շունչին ըսէ՝․ Տէր Ե-
հովան այսպէս կ'ըսէ․ զ Ո՛վ շունչ՝
չորս հովերէն եկուր, ու աս սպան-
նուածներուն վրայ փչէ՝ որ կենդա-
10 նանան ։ Եւ ես մարգարէութիւն

իբբ 587
ա Գլ․ ա․ 3 ։
բ Գլ․ գ․ 14 ։ ը․ 3 ։ ժա․ 24 ։ Ղու․ դ․ 1 ։
ւ Կամ՝ Տէրոջը Հոգիով զիս
գ Օր․ լբ․ 39 ։ ա Թագ․ բ․ 6 ։ Յով․ ե․ 21 ։ Հռով․ դ․ 17 ։ բ Կոր․ ա․ 9 ։
դ Սաղ․ ճդ․ 30 ։ Հմր 9 ։
ե Գլ․ զ․ 7 ։ ժե․ 12 ։ Յովել․ բ․ 27 ։ գ․ 17 ։
զ Սաղ․ ճզ․ 30 ։ Հմր 5 ։

ըրի , ինչպէս որ ինծի հրամայեց .
ե ու շունչը անոնց մէջը մտաւ , ու
կենդանացան , և իրենց ոտքերուն
վրայ կայնեցան . — խիստ մեծ
զօրք մը եղա—ւ ։
11 Եւ ինծի ըսաւ . Որդի մարդոյ՝
աս ոսկորները բոլոր Իսրայէլի
տունն է . ահա անոնք կ'ըսեն .
է Մեր ոսկորները չորցան , ու մեր
յոյսը կտրեցաւ . մենք կորսուած
12 ենք ։ Անոր համար մարգարէու-
թիւն ըրէ , ու անոնց ըսէ . Տէր
Եհովան այսպէս կ'ըսէ . Ահա ես
ը ձեր գերեզմանները պիտի բա-
նամ , ու ձեր գերեզմաններէն ձեզ
պիտի հանեմ՝ ով իմ ժողո-
վուրդս , և ժ ձեզ Իսրայէլի երկիրը
13 պիտի բերեմ ։ Ու երբոր ձեր
գերեզմանները բանամ , ու ձեզ
ձեր գերեզմաններէն հանեմ՝ ով
իմ ժողովուրդս , պիտի գիտնաք
14 թէ ես եմ Տէրը ։ Եւ է իմ հոգիս
ձեր ներսի դին պիտի դնեմ , ու
պիտի կենդանանաք . ու ձեր երկ-
րին մէջ ձեզ պիտի հանգստա-
ցընեմ . ու պիտի գիտնաք *որ
ես Տէրս խօսեցայ ու ըրի", կ'ըսէ
Տէրը ։
15 Եւ Տէրոջը խօսքը ինծի եղաւ՝
16 ըսելով . Ու դուն՝ որդի մարդոյ՝
ն քեզի մէկ փայտ մը առ , ու անոր
վրայ գրէ . Յուդայի համար ու
ե անոր ընկերներուն Իսրայէլի որ-
դւոցը համար . ետքը մէկ ուրիշ
փայտ մը առ , ու անոր վրայ
գրէ . Յովսէփի համար , Եփրեմին
ու անոր ընկերներուն բոլոր Իս-
17 րայէլի տանը փայտը . Եւ ծ զա-
նոնք իրարու մօտեցուր , որ մէկ
փայտ ըլլան , ու քու ձեռքիդ
18 մէջը միանան ։ Ու երբոր քու ժո-
ղովուրդիդ որդիքը քեզի խօսին
ու ըսեն . Ի՞նչ պիտի ըլլայ քեզի
աս բաները . մեզի չե՞ս պատմեր .
19 հԱնոնց ըսէ . Տէր Եհովան այս-
պէս կ'ըսէ . Ահա ես պիտի առ-
նեմ յ Յովսէփին փայտը՝ որ Եփ-
րեմին ձեռքն է , ու անոր ընկեր-
ները՝ Իսրայէլի ցեղերը , և զա-
նոնք անոր հետ մէկտեղ Յուդայի
փայտին հետը պիտի դնեմ , ու
զանոնք մէկ փայտ պիտի ընեմ . ու
իմ ձեռքիս մէջը մէկ պիտի ըլլան ։
20 Եւ ան փայտերը՝ որոնց վրայ դուն
պիտի գրես , ն անոնց աչքերուն
առջևը՝ քու ձեռքիդ մէջը ըլլան ։
21 Ու անոնց ըսէ . Տէր Եհովան այս-
պէս կ'ըսէ . Ահա ես օ Իսրայէլի
որդիքը պիտի առնեմ ան ազգե-
րուն մէջէն՝ ուր որ գացին , ու
զանոնք ամէն կողմէն պիտի ժող-
վեմ , ու զանոնք իրենց երկիրը
22 պիտի բերեմ . Եւ ք զանոնք երկ-
րին մէջը՝ Իսրայէլի լեռներուն
վրայ՝ մէկ ազգ պիտի ընեմ . ու
ռ անոնց ամէնուն վրայ մէկ թա-
գաւոր մը պիտի թագաւորէ . ու
մէյմըն ալ երկու ազգ պիտի չըլ-
լան , ու մէյմըն ալ երկու թա-
գաւորութեան պիտի չբաժնուին .
23 ս Եւ մէյմըն ալ իրենց կուռքե-
րովը , ու գարշութիւններովը ,
ու իրենց բոլոր յանցանքներովը
պիտի չպղծուին . ու ւ ես անոնք
պիտի ազատեմ իրենց բոլոր բնա-
կութիւններէն , որոնց մէջը որ
իրենք մեղք գործեցին , և զա-
նոնք պիտի սրբեմ . ու անոնք
ինծի ժողովուրդ պիտի ըլլան .
ես ալ անոնց Աստուած պիտի
24 ըլլամ ։ Եւ ш անոնց վրայ՝ իմ
ծառաս Դաւիթը թագաւոր պի-
տի ըլլայ . ու ւ ամէնքը մէկ հո-
վիւ պիտի ունենան , ու իմ ի-
րաւունքներուս մէջ պիտի քալեն ,
ու իմ օրէնքներս պիտի պահեն ,
ու զանոնք պիտի կատարեն .
25 ջ Եւ պիտի բնակին ան երկրին
վրայ՝ որն որ իմ Յակոբ ծառա-
յիս տուի , որուն մէջ ձեր հայ-
րերը բնակեցան . ու անոր վրայ՝
իրենք , ու իրենց որդիքը , և
իրենց որդւոցը որդիքը ш յաւի-
տեան պիտի բնակին . ու ш իմ ծա-
ռաս Դաւիթը յաւիտեան անոնց
26 իշխան պիտի ըլլայ ։ Եւ անոնց
հետ խաղաղութեան ուխտ պի-
տի ընեմ . անիկայ անոնց յաւի-
տենական ուխտ պիտի ըլլայ . և
զանոնք պիտի տեղաւորեմ , ու
ф պիտի շատցընեմ , և իմ ք սրբա-
րանս անոնց մէջը պիտի դնեմ յա-
27 ւիտեան ։ Ու ց իմ խորանս անոնց
քովը պիտի ըլլայ . և ես ш անոնց
Աստուած պիտի ըլլամ , ու ա-
նոնք ինծի ժողովուրդ պիտի ըլ-
28 լան ։ Եւ իմ սրբարանս յաւի-
տեան անոնց մէջը ըլլալով , ք ազ-
գերը պիտի գիտնան թէ ես եմ
Տէրը՝ որ օ Իսրայէլը կը սրբեմ ։

## ԳԼ . ԼԸ

1 Գոգին բանակը ։ 8 ու անոր չար դիտաւորու-
թիւնը ։ 14 Աստուծոյ դատաստանը անոր
դէմ ։

1 Ցարձեալ Տէրոջը խօսքը ինծի ե-
2 ղաւ՝ ըսելով . ш Որդի մարդոյ՝
բ երեսդ Մագոգի երկիրը եղող՝ Ռոշ-
ի , գ Մոսոքի ու Թոբելի իշխանին՝
դ Գոգին դարձուր , և անոր վրայով
3 մարգարէութիւն ըրէ , Ու ըսէ .
Տէր Եհովան այսպէս կ'ըսէ . ահա
ես քեզի դէմ եմ՝ ով Գոգ , Ռոշ-
ի , Մոսոքի ու Թոբելի իշխանը .
4 Ու ե քեզ պիտի դարձընեմ , և քու
կզակներուդ կարթեր պիտի անցը-

Ն . ք . Ղ Ք . իրր 587

ե Յայտ . ժա . 11 ։
է Սաղ . ճխա . 7 ։ Տես Եզ . խթ . 14 ։
ը Ես . իզ . 19 ։ Ովս . ժգ . 14 ։
ժ Գլ . լզ . 24 ։ Համր 25 ։
է Գլ . լզ . 27 ։
* Կամ՝ թէ ես իմ Տէրը . ես խօսեցայ , ու պիտի կատարեմ ,
ն Տես Թուոց . ժէ . 2 ։
ե բ Մն . ժա . 12 . 13 . 16 ։ ժե . 9 ։ Լ . 11 . 18 ։
ծ Տես համր 22 . 24 ։
ի Գլ . ժբ . 9 ։ իդ . 19 ։
հ Զաք . ժ . 6 ։
յ Համր 16 . 17 ։
ն Գլ . ժբ . 3 ։
օ Գլ . լզ . 24 ։
ք Ես . ժա . 13 ։ Երեմ . գ . 18 ։ Ե . 4 ։ Ովսէ . ա . 11 ։

Ն . ք . Ղ Ք . իրր 587

ր Գլ . լդ . 23 . 24 ։ Յով . ժ . 16 ։
ս Գլ . լզ . 25 ։
ւ Գլ . լզ . 28 . 29 ։
ш Ես . խ . 11 ։ Երեմ . իգ . 5 ։ Լ . 9 ։ Գլ . լդ . 23 . 24 ։ Ովս . գ . 5 ։ Ղուկ . ա . 32 ։
ւ Համր 22 ։ Յով . ժ . 16 ։
ղ Գլ . լզ . 27 ։
ջ Գլ . լզ . 28 ։
ш Ես . կ . 21 ։ Յովել . գ . 20 ։ Ամով . թ . 15 ։
ш Համր 24 ։ Յով . ժբ . 34 ։
ք Սաղ . ձթ . 3 ։ Ես . ծե . 3 ։ Երեմ . լբ . 40 ։ Գլ . լդ . 25 ։
փ Գլ . լզ . 10 . 37 ։
ք բ Կոր . զ . 16 ։
ց Ղև . իզ . 11 . 12 ։ Գլ . խգ . 7 ։ Յով . ա . 14 ։
ш Գլ . ժա . 20 ։ ժդ . 11 ։ լզ . 28 ։
ք Գլ . լզ . 23 ։
օ Գլ . ի . 12 ։

ш Գլ . լթ . 1 ։
բ Գլ . լե . 2 . 3 ։
գ Գլ . լբ . 26 ։
դ Յայտ . ի . 8 ։
ե դ Թագ . ժթ . 28 ։ Գլ . իթ . 4 ։ լթ . 2 ։

նեմ, ու քեզ՝ ու քու բոլոր զօրքդ
պիտի հանեմ, ձիերը, ու ձիաւոր-
ները՝ ամէնն ալ կատարելապէս
հագուած. և վահանաւորներուն ու
ասպարաւորներուն մեծ ժողովքը՝
5 ամէնն ալ սուր բռնող. Անոնց
հետ Պարսիկները, Եթովպացիներ-
րը ու Փուդացիները, ամէնն ալ
ասպարաւոր ու սաղաւարտաւոր.
6 Գոմեր, ու անոր բոլոր գուն-
դերը, Թորգոմայի տունը հիւսիսի
ծայրերէն, ու անոր բոլոր գունդե-
րը. շատ ժողովուրդներ քեզի հետ
պիտի հանեմ։
7 Պատրաստ եղիր, և քեզ, ու
քու քովդ ժողվուած բոլոր ժողով-
ներդ պատրաստէ՝, ու դուն անոնց
8 պահապան եղիր։ Շատ օրերէն
ետքը քու զօրքերդ պիտի համ-
րես. ետքի տարիները պիտի գաս
ան երկրին վրայ՝ որ սուրէն ազա-
տուած է, և ան ժողովուրդին վրայ՝
որ շատ ազգերէն ժողվուած է
Իսրայէլի լեռներուն վրայ՝ որոնք
մշտնջենաւոր աւերակ էին. բայց
անիկայ ազգերէն ելած ըլլալով,
ամէնքը ապահովութեամբ պիտի
9 բնակին։ Իսկ դուն մրրիկի պէս
պիտի ելլես գաս, երկիրը ծած-
կելու համար ամպի պէս պիտի
ըլլաս, դուն և քու բոլոր գունդերդ
ու շատ ժողովուրդներ քեզի հետ։
10 Տէր Եհովան այսպէս կ'ըսէ. Ան
օրը պիտի ըլլայ որ՝ քու միտքդ
բաներ պիտի գան, ու չար խոր-
11 հուրդ մը պիտի մտածես. Ու պի-
տի ըսես. Անպարիսպ գեղերուն եր-
կիրը ելլեմ. հանգստութեան մէջ
եղողներուն, ապահովութեամբ
բնակողներուն վրայ երթամ. ա-
նոնց ամէնը անպարիսպ տեղերու-
կը բնակին, և նիգեր ու դռներ չու-
12 նին. Որ աւար յափշտակես, և
կողոպուտ կողոպտես. և քու ձեռ-
քըդ՝ բնակուած աւերակներուն
վրայ, ու ազգերէն ժողվուած, և
խաշինք ու ապրանք ստացած, որ
երկրին բարձր տեղուանքը բնա-
կած ժողովուրդին վրայ դարձնես։
13 Սաբա, ու Դեդան, և Թարսիսի
վաճառականները, ու անոր բոլոր
առոյգ առիւծները քեզի պիտի ը-
սեն. Միթէ աւա՞ր յափշտակելու
եկար. կողոպուտ կողոպտելու հա-
մար քու ժողովքդ ժողվեցիր, որ
արծաթ ու ոսկի վերցընես, խա-
շինք ու ապրանք առնես, մեծ ա-
ւար յափշտակես։
14 Անոր համար մարգարէութիւն
ըրէ՝ որդի մարդոյ, ու Գոգին ըսէ.
Տէր Եհովան այսպէս կ'ըսէ. Ան
օրը՝ որ իմ ժողովուրդս Իսրայէ-
լը ապահովութեամբ բնակի՝ ա-

Ն. Ք. գՔ. Իրր 587
ղ Գլ. ԻԳ. 12։
ե Գլ. ԻԷ. 10. Լ. 5։
ը Ծն. Ժ. 2։
ը Գլ. ԻԷ. 14։
ժ Ես. Ը. 9. 10։ Երեմ. ԽԶ. 3. 4. 14։ Ծա. 12։
ի Ծն. ԽԹ. 1։ Բ Օր. Դ. 30։ Հմր 16։
* Եբր. պիտի համրուիս.
ւ Հմր 12։ Գլ. ԼԴ. 13։
ե Գլ. ԼԶ. 1. 4. 8։
ծ Երեմ. ԻԳ. 6։ Գլ. ԻԸ. 26։ ԼԴ. 25. 28։ Հմր 11։
կ Ես. ԻԸ. 2։
հ Երեմ. Դ. 13։ Հմր 16։
յ Երեմ. ԽԹ. 31։
ղ Հմր 8։
ճ Գլ. ԼԴ. 34. 35։
մ Հմր 8։
յ Դատ. Թ. 37։
ն Գլ. ԻԷ. 22. 23։
շ Գլ. ԻԷ. 15. 20։
ո Գլ. ԻԷ. 12։
չ Տես Գլ. ԺԹ. 3. 5։
պ Ես. Դ. 1։
ջ Հմր 8։

15 հա դուն պիտի գիտնաս, Ու քու
տեղէդ՝ հիւսիսի ծայրերէն պիտի
գաս, դուն ու քեզի հետ շատ ժո-
ղովուրդներ՝ ամէնը ձիեր հեծած,
մեծ բազմութեամբ, ու շատ զօր-
16 քով. Ու իմ ժողովուրդիս Իս-
րայէլին վրայ՝ ամպի պէս երկիրը
ծածկելու պիտի ելլես. Վերջին
ետքի օրերը պիտի ըլլայ. ու քեզ
իմ երկրիս վրայ պիտի բերեմ, որ-
պէս զի ազգերը զիս ճանչնան՝ երբ-
որ ես անոնց աչքերուն առջեւ՝
քու վրադ փառաւորուիմ՝ ով
Գոգ։
17 Տէր Եհովան այսպէս կ'ըսէ.
Դուն անիկա՞յ ես, որ քեզի համար
առջի օրերը՝ ան օրը տարինե-
րը մարգարէութիւն ընող Իսրայէլի
մարգարէներուն՝ իմ ծառաներուս
միջոցովը ըսի թէ՝ քեզ անոնց վրայ
18 պիտի բերեմ։ Ու ան օրը՝ Գոգը
Իսրայէլի երկրին վրայ եկած օրը՝
կ'ըսէ Տէր Եհովան, իմ սրտմտու-
19 թիւնս երեսս պիտի ելլէ։ Ու իմ
նախանձովս իմ բարկութեանս կը-
րակովը խօսեցայ, որ ան ատենը
անշուշտ Իսրայէլի երկրին վրայ մեծ
20 խռովութիւն պիտի ըլլայ. Ու ծո-
վու ձուկերը, ու երկինքի թռ-
չունները, և դաշտի գազանները,
ու գետնի վրայ սողացող բոլոր
սողունները, ու երկրի երեսին վրայ
եղող բոլոր մարդիկները իմ երե-
սէս պիտի խռովին. և լեռները
պիտի փլչին, ու զահավէժ ժայռերը
պիտի իյնան, ու բոլոր պարիսպ-
21 ները գետինը պիտի իյնան։ Ու
անոր դէմ՝ իմ բոլոր լեռներուս
վրայ սուր պիտի կանչեմ, կ'ըսէ
Տէր Եհովան. մարդուն սուրը իր
22 եղբօրը վրայ պիտի ըլլայ։ Ու ա-
նոր հետ ժանտախտով ու արիւ-
նով պիտի վիճիմ, և անոր վրայ,
ու անոր զօրացը գունդերուն վրայ,
ու անոր հետ եղող շատ ժողո-
վուրդներուն վրայ՝ յորդահոս անձ-
րև, ու կարկուտի քարեր, կրակ
23 ու ծծումբ պիտի տեղամ։ Ու
շատ ազգերու առջև պիտի փառա-
ւորուիմ, ու սրբուիմ, և ճանչ-
ցուիմ. ու պիտի գիտնան թէ ես
եմ Տէրը։

## ԳԼ. ԼԹ

1 Աստուծոյ դատաստանը Գոգին դէմ։ 8 Իսրայէլի յաղթութիւնը։ 11 Գոգին թաղումը Գոգի բազմութեան ձորին մէջ։ 17 Թռչուններուն խնճոյքը։ 23 Իսրայէլ՝ իր մեղացը համար տանջուելէն ետքը, յաւիտենական շնորհքով մը նորէն մէկտեղ պիտի ժողվուի։

1 Ու դուն՝ որդի մարդոյ՝ Գոգին
վրայով մարգարէութիւն ըրէ,
ու ըսէ. Տէր Եհովան այսպէս
կ'ըսէ. Ահա ես քեզի դէմ եմ՝ ով

Ն. Ք. գՔ. Իրր 587
ա Գլ. ԼԹ. 2։
բ Հմր 6։
գ Հմր 9։
դ Հմր 8։
ե Եւ. Ժդ. 4։ Գլ. ԼԶ. 23։ ԼԹ. 21։
† Եբր. սրբուիմ.
‡ Կամ՝ բարկութեամբս
զ Գլ. ԼԶ. 5. 6։ ԼԹ. 25։
է Սաղ. ՁԹ. 46։
ձ Անգ. Բ. 6. 7։ Յայտ. ԺԶ. 18։
ը Ովս. Դ. 3։
ժ Երեմ. Դ. 24։ Նաւ. Ա. 5. 6։
ի Գլ. ԺԴ. 17։
լ Սաղ. ՃԵ. 16։
խ Դատ. Է. 22։ Ա Թագ. ԺԴ. 20։ Բ Մն. Ի. 23։
ծ Գլ. Ե. 17։
կ Ես. ԿԶ. 16։ Երեմ. ԻԵ. 31։
հ Գլ. ԺԳ. 11։ Յայտ. ԺԶ. 21։
ձ Սաղ. ԺԱ. 6։ Տես Ես. ԻԹ. 6։ Լ. 30։
ղ Գլ. ԼԶ. 23։
ճ Սաղ. Թ. 16։ Գլ. ԼԷ. 28։ ԼԹ. 7։ Հմր 16։
ա Գլ. ԼԸ. 2. 3։

Ն. ք. գ. Թ. ւոր 587

Բ Գւ. լթ. 15.
Գ Գւ. լը. 21. Հմր 17.
Դ Գւ. լգ. 27.
Ե Գմ. լը. 22. Ամովս. 4. Ն Սաղ. Ճբ. 10.
Ե Հմր 22.
Է Ղև. Ժը. 21. Գւ. Ի. 39.
Ը Գւ. լը. 16. 23.
Ժ Տես Յայտ. Ժզ. 17. Իա. 6.
Ի Գւ. լը. 17.
Լ Եա. Ժգ. 2.
Խ Բ Օր. Իա. 23. Հմր 14. 16.
Ծ Գւ. Իը. 22.

Գոգ, Ռովսի, Մոսոքի ու Թոբելի
2 իշխանը. Ու ես քեզ պիտի դարձընեմ, քեզ պիտի տանիմ, Ե և
հիւսիսի ծայրերէն քեզ պիտի հանեմ, ու քեզ Իսրայէլի լեռներուն
3 վրայ պիտի բերեմ։ Եւ քու աղեղդ քու ձախ ձեռքէդ վար պիտի
ձգեմ, ու քու նետերդ՝ աջ ձեռ-
4 քէդ վար պիտի նետեմ։ Գ Դուն քու բոլոր գունդերովդ, ու քու
հետդ եղող ժողովուրդներով Իսրայէլի լեռներուն վրայ պիտի իյնաս. Դ Քեզ ամէն տեսակ թև ունեցող գիշատիչ թռչունին, ու դաշտի գազաններուն կերակուր պիտի
5 տամ. Դաշտի երեսին վրայ պիտի իյնաս. վասն զի ես խօսեցայ՝ կ'ըսէ
6 Տէր Եհովան։ Ե Եւ Մագոգի վրայ, ու կղզիներուն մէջ ապահովութեամբ բնակողներուն վրայ կրակ պիտի ղրկեմ. ու պիտի գիտնան
7 թէ ես եմ Տէրը։ Է Եւ իմ սուրբ անունս իմ ժողովուրդիս Իսրայէլին մէջը պիտի ճանչցընեմ. ու պիտի չթողում որ մէյմըն ալ Ը իմ սուրբ անունս պղծուի. Ի ու ազգերը պիտի գիտնան թէ ես եմ Տէրը՝
8 Իսրայէլի մէջ եղող Սուրբը։ Ժ Ահա կու գայ, ու պիտի կատարուի՝ կ'ըսէ Տէր Եհովան. Ի իմ ըսած օրս
9 աիկայ է։ Եւ Իսրայէլի քաղաքներուն բնակիչները պիտի ելլեն, ու կրակ պիտի վառեն, ու զէնքերը պիտի այրեն. և ասպարներով, վահաններով, աղեղներով, նետերով, բիրերով, ու նիզակներով եօթը տարի կրակ պիտի վառեն։
10 Եւ դաշտէն փայտ պիտի չբերեն, ոչ ալ անտառներէն պիտի կտրեն. հապա զէնքերով կրակ պիտի վառեն. Լու զիրենք թալլողները պիտի թալլեն, ու զիրենք կողոպտողները պիտի կողոպտեն՝ կ'ըսէ Տէր Եհովան։
11 Ու պիտի ըլլայ որ այն օրը՝ Գոգին Իսրայէլի մէջ գերեզմանի տեղ պիտի տամ անցաւորաց ձորը՝ ծովուն արևելեան կողմէն. և անիկայ անցաւորները պիտի արգիլէ. ու հոն Գոգը, ու անոր բոլոր բազմութիւնը պիտի թաղեն, և զանիկայ Գոգի բազմութեան ձորը պի-
12 տի կոչեն։ Ու Իսրայէլի որդիքը՝ Խ երկիրը մաքրելու համար եօթը
13 ամիս զանոնք պիտի թաղեն։ Ու երկրին բոլոր ժողովուրդը զանոնք պիտի թաղեն. և ասիկայ անոնց անուն մը պիտի ըլլայ այն օրը որ Ծ ես փառաւորուիմ, կ'ըսէ Տէր Ե-
14 հովան։ Ու մարդիկներ պիտի որոշեն որ շարունակ երկրին մէջը պտըտին, ու անցնողներուն հետ՝ երկրի երեսին վրայ մնացածները

թաղեն, Կ որպէս զի զանիկայ մաքրեն. անոնք եօթը ամիսէն ետքը
15 պիտի փնտռեն։ Ու երկրին մէջէն անցնողները անցած ատեննին երբոր մարդու ոսկոր տեսնեն, քովը նշան մը պիտի կանգնեն մինչև որ թաղողները զանիկայ Գոգի բազ-
16 մութեան ձորը թաղեն։ Ու քաղաքին անունն ալ՝ Համոնա պիտի ըլլայ. այսպէս Հ երկիրը պիտի մաքրեն։
17 Եւ դուն՝ որդի մարդոյ՝ Տէր Եհովան այսպէս կ'ըսէ. Յ Ամէն տեսակ թևաւոր թռչունին, ու դաշտի բոլոր գազաններուն Լ ըսէ. Ժողվուեցէ՛ք, ու եկէ՛ք. իմ ձեզի համար զոհած զոհիս՝ Ճ Իսրայէլի լեռներուն վրայ եղած մեծ զոհին ամէն կողմէն մօտեցէ՛ք, որ միս ուտէք, ու արիւն խմէք.
18 Ջ Զօրաւորներուն միսը ուտէք, ու երկրի իշխաններուն արիւնը խմէք, խոյերու, գառներու, նոխազներու, և զուարակներու՝ որոնց ամէնը Բասանի զեր անասուններ
19 են։ Եւ ձեզի համար զոհած զոհէս՝ մինչև կշտանալնիդ ճարպ ուտէք, ու մինչև գինովնալնիդ արիւն խը-
20 մէք։ Եւ իմ սեղանիս վրայ՝ ձիերէն, ու կառքի ձիաւորներէն, զօրաւորներէն, ու ամէն պատերազմող մարդէն կշտանաք՝ կ'ըսէ
21 Տէր Եհովան։ Եւ ազգերուն մէջ իմ փառքս պիտի դնեմ, ու ամէն ազգերը իմ ըրած դատաստաններս, ու անոնց վրայ դրած ձեռքս պիտի
22 տեսնեն. Ու Իսրայէլի տունը այն օրէն ետև ալ պիտի գիտնան թէ
23 իրենց Տէր Աստուածը ես եմ։ Եւ ազգերը պիտի գիտնան թէ Իսրայէլի տունը՝ իրենց անօրէնութեանը համար՝ ինծի ապստամբ ըլլալնուն համար գերի եղան, ու ես իմ երեսս անոնցմէ ծածկեցի, և զանոնք իրենց թշնամեացը ձեռքը տուի, ու ամէնքը սրով ինկան։
24 Իրենց պղծութեանը համեմատ՝ ու իրենց յանցանացը համեմատ՝ իրենց հատուցում ըրի, ու իմ երեսս իրենցմէ ծածկեցի։
25 Անոր համար Տէր Եհովան այսպէս կ'ըսէ. Հիմա Յակոբին գերութիւնը պիտի դարձընեմ, ու բոլոր Իսրայէլի տանը պիտի ողորմիմ, և իմ սուրբ անուանս համար
26 նախանձաւոր պիտի ըլլամ։ Ու երբոր անոնք իրենց երկրին մէջ ապահովութեամբ բնակին, ու վախցընող մը չըլլայ, այն ատենը իրենց անարգանքը ու իրենց ինծի դէմ ըրած բոլոր յանցանքները
27 պիտի կրեն, Երբոր զանոնք ժողովուրդներէն դարձընեմ, ու զա-

Ն. ք. գ. Թ. ւոր 587

Կ Հմր 12.
Հ Հմր 12.
Յ Յայտ. Ժթ. 17.
Ղև. Ժը. 6. Լդ. 6. Եբր. Ժա. 9. Սոփ. ա. 7.
Ճ Հմր 4.
Ջ Յայտ. Ժթ. 18.
Բ Օր. Լբ. 14. Սաղ. Իբ. 12.
Ն Սաղ. Հզ. 6. Գւ. լը. 4.
Գւ. լը. 16. 23.
Գւ. Ե. 40. Ովս. ա. 11.
Բ Օր. Լա. 17.
Գւ. Իզ. 25.
Հմր 7. 28.
Գւ. լզ. 18. 19. 20. 23.
Գւ. Լզ. 19.
Գւ. Ի. 40.
Բ Գւ. Իզ. 5. 6.
Դան. Թ. 16.
Գւ. Իը. 25. 26.

Ն․ Ք․ ԴՔ․ իրր 587

ժ Դւ․ ԼԴ․ 23․ 24․ ԼԸ․ 16․
ծ Դւ․ ԼԶ․ 30․ Հմր 22․
ձ Ես․ ԾԴ․ 8․
ա Յովէլ․ Բ․ 28․ Զաք․ ԺԲ․ 10․ Գոր․ Բ․ 17․

նոնք իրենց թշնամեայը երկիրնե-
րէն ժողվեմ, ան ատենը անոնց
մէջը՝ ժշատ ազգաց աչքերուն առ-
28 ջեւ պիտի սրբուիմ ։ ծԵւ պիտի
գիտնան թէ ես եմ անոնց Տէր
Աստուածը․ որովհետեւ զանոնք
ազգերու մէջ գերի քշեցի, ու զա-
նոնք նորէն իրենց երկիրը ժողվեցի,
եւ անոնցմէ հոն մարդ մը չթողուցի ։
29 ձՈւ մէյմըն ալ իմ երեսս անոնցմէ
պիտի չծածկեմ, քանզի աիմ Հո-
գիս Իսրայէլի տանը վրայ թափե-
ցի՝ կ՚ըսէ Տէր Եհովան ։

## ԳԼ․ Խ

1 Մարգարէին տեսիլքին ժամանակը, եղանակը ու նպատակը ։ 6 Արեւելեան դրանը․ 20 Հիւսիսային դրանը․ 24 Հարաւային դրանը․ 32 Ներսի գաւիթին արեւելեան դրանը․ 35 եւ Հիւսիսային դրանը ստորագրութիւնը ։ 39 Ութը սեղանները ։ 44 Սենեակները ։ 48 Տանը սրահը ։

574
* Եբր․ տարւոյն գլուխը
ա Դւ․ ԼԳ․ 21․
բ Դւ․ Ա․ 3․
գ Դւ․ Ը․ 3․
դ Յայտ․ ԻԱ․ 10․
ե Դւ․ Ա․ 7․ Դան․ Ժ․ 6․
զ Դւ․ ԽԷ․ 3․
է Յայտ․ ԺԱ․ 1․ ԻԱ․ 15․
ը Դւ․ ԽԴ․ 5․
թ Դւ․ ԽԳ․ 10․
ժ Դւ․ ԽԲ․ 20․
† Եբր․ շէնքին

1 Մեր գերութեանը քսանուհինգ-
երորդ տարին՝ *առջի ամսոյն
ամսուն տասներորդ օրը՝ աքաղաքին
զարնուելուն չորեքտասաներորդ
տարին՝ նոյն օրը բՏէրոջը ձեռքը
իմ վրաս եղաւ, ու զիս հոն տա-
2 րաւ․ գԶիս Աստուծոյ տեսիլքնե-
րով Իսրայէլի երկիրը տարաւ, դեւ
զիս խիստ բարձր լեռան մը վրայ
դրաւ․ ու անոր վրայ՝ հարաւային
կողմը՝ քաղաքի մը շինուածքի պէս
3 †շէնք մը կար ։ Ու երբոր զիս հոն
տարաւ, ահա մէկ մարդ մը՝ որուն
երեւոյթը եպղնձի երեւոյթի պէս
էր, եւ զանոր ձեռքը՝ քթանէ լար,
էու չափի եղէգ կար․ ու անիկայ
4 դրանը կայներ էր ։ Եւ ան մարդը
ինծի ըսաւ․ ըՈրդի մարդոյ՝ աչքե-
րովդ տես, ու ականջներովդ լսէ,
ու քեզի ամէն ցուցուցածներուս
ուշադրութիւն ըրէ․ վասն զի դուն
հոս բերուեցար, որ ասոնք քեզի
ցուցընեմ․ թԱմէն տեսածդ Իս-
րայէլի տանը պատմէ ։
5 Եւ ահա տանը դուրսէն շուրջա-
նակի ժպարիսպ կար․ ու ան մար-
դուն ձեռքը՝ վեց կանգունի երկայ-
նութեամբ չափի եղէգ մը կար, կան-
գունը՝ մէկ կանգուն ու չորս մատ-
նաչափ ըլլալով․ ու †պարսպին լայ-
նութիւնը եղէգ մը՝ ու բարձրու-
թիւնը եղէգ մը չափեց ։
6 Եւ անիկայ դէպ ՚ի արեւելք նա-
յող դուռը եկաւ, ու անոր աս-
տիճաններուն վրայ ելաւ, ու դրա-
նը մէկ սեամը՝ եղէգ մը լայն, ու
մէկալ սեամը եղէգ մը լայն չափեց ։
7 Եւ ամէն մէկ խուցը՝ եղէգ մը եր-
կայն՝ ու եղէգ մը լայն էր․ ու խու-
ցերուն միջոցը հինգ կանգուն էր․
եւ դրանը սրահին քովը եղող դրա-
նը սեամը ներսէն մէկ կանգուն էր ։

8 Ու անիկայ՝ դրանը սրահը ներսէն
9 մէկ եղէգ չափեց ։ Եւ դրանը
սրահը ութը կանգուն չափեց․ ու
անոր դրանդիքը երկու կանգուն
էր․ ու դրանը սրահը ներսի կող-
10 մէն էր ։ Ու դէպ ՚ի արեւելք եղող
դրանը խուցերը՝ մէկ կողմէն իրեք
ու մէկալ կողմէն իրեք էին, ու
իրեքին չափը մէկ էր․ եւ դրան-
դիներուն չափը՝ մէկ կողմէն ու մէկալ
11 կողմէն մէկ էր ։ Ու դրանը մուտ-
քին լայնութիւնը տասը կանգուն
չափեց, ու դրանը երկայնութիւնը
12 տասուիրեք կանգուն ։ Եւ խու-
ցերուն առջեւը՝ մէկ կողմէն մէկ կան-
գունի սահման՝ ու մէկալ կողմէն
մէկ կանգունի սահման մը կար․
ու խուցերը մէկ կողմէն վեց կան-
գուն՝ ու մէկալ կողմէն վեց կան-
13 գուն էին ։ Եւ դուռը չափեց մէկ
խուցին տանիքէն մինչեւ մէկալին
տանիքը․ անոր լայնութիւնը քսա-
նուհինգ կանգուն էր․ ու մուտ-
14 քերը դիմացէ դիմաց էին ։ Եւ
դրանդիները [illegible] վաթսուն
կանգուն ըրաւ, մինչեւ դրանը բո-
լորտիքը եղող գաւիթին դրանդի-
15 քը ։ Եւ դուրսի դրանը երեսէն
մինչեւ ներսի դրանը սրահին երեսը՝
16 յիսուն կանգուն էր ։ Ու խուցե-
րուն, եւ անոնց դրանդիներուն քովը՝
դրանը ներսի կողմէն՝ շուրջանակի
է‡վանդակապատ պատուհաններ
կային․ սրահներն ալ այսպէս էին․
ու ներսի կողմէն շուրջանակի պա-
տուհաններ կային․ եւ դրանդիներուն
վրայ արմաւենիներ կային ։
17 Ու զիս ըդուրսի գաւիթը բերաւ․
եւ ահա հոն թսենեակներ՝ ու գաւի-
թին համար շինուած շուրջանակի
քարայատակ կար․ ու քարայատա-
կին վրայ ժերեսուն սենեակ կար ։
18 Եւ դռներուն քովի քարայատակը,
դռներուն երկայնութեանը դիմացը
19 եղող վարի քարայատակն էր ։ Ու
անիկայ՝ վարի դրանը առջեւէն մինչեւ
ներքին սրահին առջեւը դուրսէն՝
դէպ ՚ի արեւելք ու հիւսիս՝ լայնու-
թիւնը հարիւր կանգուն չափեց ։
20 Եւ դուրսի գաւիթին դէպ ՚ի
հիւսիս նայող դրանը երկայնու-
թիւնը ու լայնութիւնը չափեց ։
21 Ու անոր խուցերը՝ իրեք մէկ կող-
մէն էր, ու իրեք մէկալ կողմէն․
եւ անոր դրանդիքը ու սրահները՝
առջի դրանը չափովն էին․ անոր
երկայնութիւնը յիսուն կանգուն,
ու լայնութիւնը քսանուհինգ կան-
22 գուն էր ։ Եւ պատուհանները,
ու սրահները, ու արմաւենիները
դէպ ՚ի արեւելք նայող դրանը չա-
փովն էին․ ու եօթը աստիճանով
ան դուռը կ՚ելլէին․ եւ սրահները

Ն․ Ք․ ԴՔ․ 574

է Գ Թագ․ Զ․ 4․
‡ Կամ՝ ներսէն լայն դուրսէն նեղ
ը Յայտ․ ԺԱ․ 2․
թ Գ Թագ․ Զ․ 5․
ժ Դւ․ ԽԵ․ 5․

Ն. Ք. Դ. Ք. 574

23 անոնց առջևն էին ։ Ու ներսի
գաւիթը դուռ մը ունէր՝ հիւսի-
սային դրանը՝ ու արևելեան դրանը
դիմացը , ու դրանէն մինչև միւս
դուռը՝ հարիւր կանգուն չափեց ։
24 Եւ զիս հարաւային կողմը տա-
րաւ . և ահա հարաւային կողմը
դուռ մը կար . ու անոր դրանդի-
քը , ու սրահները չափեց , որ նոյն
25 չափերուն համեմատ էին ։ Եւ ա-
նիկայ ու անոր սրահները նոյն պա-
տուհաններուն պէս պատուհաններ
ունէին չուրջանակի . անոր երկայ-
նութիւնը յիսուն կանգուն , ու
լայնութիւնը քսանուհինգ կան-
26 գուն էր ։ Եւ ան [illegible] ելլելու
համար եօթը աստիճան կար . ու
անոր սրահները անոնց առջևն էին .
ու անոր դրանդեացը վրայ՝ մէկ կող-
մէն ու մէկալ կողմէն արմաւենիներ
կային ։
27 Ու ներսի գաւիթը դուռ մը ու-
նէր դէպ 'ի հարաւ . ու մէկ դռնէն
մինչև միւս դուռը դէպ 'ի հարաւ՝
28 հարիւր կանգուն չափեց ։ Եւ զիս
հարաւային դռնէն ներսի գաւիթը
բերաւ , ու հարաւային դուռը չա-
փեց , որ նոյն չափերուն համեմատ
29 էր ։ Եւ անոր խուցերը , ու դրան-
դիքը , ու սրահները՝ նոյն չափե-
րուն համեմատ էին . և անիկայ , ու
անոր սրահները չուրջանակի պա-
տուհաններ ունէին . անոր երկայ-
նութիւնը յիսուն կանգուն , ու
լայնութիւնը քսանուհինգ կանգուն
30 էր ։ Եւ սրահները չուրջանակի
Լ քսանուհինգ կանգուն երկայն ,
31 ու հինգ կանգուն լայն էին ։ Եւ
սրահները դէպ 'ի դուրսի գաւիթն
էին . ու դրանդեացը վրայ արմա-
ւենիներ կային . և ան [illegible] ել-
լելու համար ութը աստիճան կար ։
32 Եւ զիս ներսի գաւիթը տարաւ
դէպ 'ի արևելք , ու դուռը չա-
փեց , որ նոյն չափերուն համեմատ
33 էր ։ Եւ անոր խուցերը , ու
դրանդիքը , ու սրահները նոյն չա-
փերուն համեմատ էին . և անիկայ
ու անոր սրահները չուրջանակի
պատուհաններ ունէին . անոր եր-
կայնութիւնը յիսուն կանգուն ,
ու լայնութիւնը քսանուհինգ կան-
34 գուն էր ։ Եւ անոր սրահները դէպ
'ի դուրսի գաւիթն էին . ու անոր
դրանդիքը մէկ կողմէն ու մէկալ
կողմէն արմաւենիներ ունէին . և
ան [illegible] ելլելու համար ութը
աստիճան կար ։
35 Ու զիս հիւսիսային դուռը բե-
րաւ . ու նոյն չափերուն համեմատ
36 չափեց խուցերը , դրանդիքը ու
սրահները . և չուրջանակի պատու-
հաններ ունէր . անոր երկայնու-
թիւնը յիսուն կանգուն , ու լայ-
նութիւնը քսանուհինգ կանգուն
37 էր ։ Եւ անոր դրանդիքը դէպ 'ի
դուրսի գաւիթն էր . ու դրանդիքը
մէկ կողմէն ու մէկալ կողմէն արմա-
ւենիներ ունէին . և ան [illegible] ել-
լելու համար ութը աստիճան կար ։
38 Ու մէկ սենեակ մը կար , որ ա-
նոր մուտքը դռներուն քովի դրան-
դեացը մօտ էր . ողջակէզը հոն կը
39 լուային ։ Եւ դրանը սրահին մէջ
մէկ կողմէն երկու սեղան՝ ու մէկալ
կողմէն երկու սեղան կար , որ ա-
նոնց վրայ ողջակէզը , ու ՀՄեղքի
պատարագը , ու ՅՅանցանքի պա-
40 տարագը մորթեն ։ Եւ հիւսիսա-
յին դրանը մուտքը ելլելուն դուրսի
կողմը՝ երկու սեղան , ու մէկալ կող-
մը եղող դրանը սրահին մէջ՝ երկու
41 սեղան կար ։ Դրանը քովը մէկ
կողմէն չորս սեղան , ու մէկալ կող-
մէն չորս սեղան կար . ութը սեղան
էր . որ անոնց վրայ կը մորթէին ։
42 Եւ չորս սեղանները՝ որոնք ողջակէ-
զի համար էին , տաշուած քարէ՝
մէկ ու կէս կանգուն երկայն , ու
մէկ ու կէս կանգուն լայն , ու մէկ
կանգուն բարձր էին . և ողջակէզը
ու զոհը մորթելու գործիքները ա-
43 նոնց վրայ կը դնէին ։ Ու ներսէն
չուրջանակի չորս մատնաչափ ՒԵ-
զերք մը՝ շինուած էր . ու սեղաննե-
րուն վրայ զոհին միսը կը [illegible] ։
44 Եւ ներսի դրանը դուրսի կողմը՝
հիւսիսային դրանը քովը եղող ներ-
սի գաւիթին մէջ՝ Ղերգեցողներուն
սենեակները կար . ու անոնց երեսը
դէպ 'ի հարաւ էր . մէկը արևելեան
դրանը քովն էր , որ երեսը դէպ 'ի
45 հիւսիս էր ։ Եւ ինծի ըսաւ . Աս
սենեակը որ դէպ 'ի հարաւ կը նա-
յի , Շտանը պահպանութիւնը ը-
46 նող քահանաներուն համար է . Ու
ան սենեակը որ դէպ 'ի հիւսիս կը
նայի , Տսեղանին պահպանութիւ-
նը ընող քահանաներուն համար է .
անոնք ՕՍադովկի որդիքն են , ո-
րոնք Ղևիի որդւոցմէ՝ Տէրոջը կը
մօտենան՝ անոր ծառայութիւն ը-
նելու համար ։
47 Եւ գաւիթը չափեց , որուն եր-
կայնութիւնը հարիւր կանգուն ,
ու լայնութիւնը հարիւր կանգուն
էր . անիկայ քառակուսի էր . ու
սեղանը տանը առջևն էր ։
48 Եւ զիս տանը սրահը տարաւ .
ու սրահին դրանդիքը չափեց՝ հինգ
կանգուն մէկ կողմէն , ու հինգ
կանգուն մէկալ կողմէն . և դրանը
լայնութիւնը՝ մէկ կողմէն իրեք կան-
գուն , ու մէկալ կողմէն իրեք կան-
49 գուն էր ։ ՓՍրահին երկայնութիւ-
նը քսան կանգուն , ու լայնութիւ-

Ն. Ք. Դ. Ք. 574

Լ Տես Հմր 21. 25. 33. 36.

Հ Ղև. դ. 2. 3.
Յ Ղև. ե. 6. Զ. 6. Է. 1.

Ւ Կամ՝ կորթեր

Ղ Ա Մն. զ. 31.

Շ Ղև. ը. 35. Թու. գ. 27. 28. 32. 38. Ժը. 5. Ա Մն. Բ. 23. Բ Մն. Ժգ. 11. Սաղ. ՃԼդ. 1.
Տ Թու. Ժը. 5. Գլ. Խդ. 15.
Օ Գ Թագ. Բ. 35. Գլ. Խդ. 19. Խդ. 15. 16.

Փ Գ Թագ. Զ. 3.

Ն. Ք. ՇՀԴ. 574

նը տասնումէկ կանգուն [*]էր. և
հոն տասը աստիճաններով կ'ել-
լէին". ու Նդրանդևածը քովը սիւ-
ներ կային. մէկը՝ մէկ կողմէն, մէ-
կայն ալ՝ մէկալ կողմէն ։

* Կամ՝ էր՝ ան աստիճաններովը մէկտեղ՝ ուրով հոն կ'ելլէին.
Ե Գ Թագ. Է. 21.

## ԳԼ. ԽԱ

1—26 Տաճարին չափերը, բաժանումը, սենեակները ու զարդերը ։

1 Ու զիս տաճարը տարաւ, ու անոր
դրանդիքը չափեց. մէկ կողմէն
վեց կանգուն լայն, ու մէկալ կող-
մէն վեց կանգուն լայն էր, խորա-
2 նին լայնութեանը համեմատ ։ Ու
դրանը լայնութիւնը տասը կան-
գուն էր. ու դրանը քովերը մէկ
կողմէն հինգ կանգուն, ու մէկալ
կողմէն հինգ կանգուն էին. և անոր
երկայնութիւնը քառասուն կան-
գուն, ու լայնութիւնը քսան կան-
գուն չափեց ։
3 Ու ներս մտաւ. և դրանը դրան-
դիքը երկու կանգուն, ու դուռը
վեց կանգուն չափեց. ու դրանը
լայնութիւնը եօթը կանգուն էր ։
4 Ու [Ա]անոր երկայնութիւնը չա-
փեց քսան կանգուն, ու լայնու-
թիւնը քսան կանգուն՝ տաճարին
լայնութեանը համեմատ. ու ինծի
ըսաւ. Ասիկայ է սրբութիւն սըր-
բութեանցը ։
5 Ու տանը պատը վեց կանգուն,
ու տանը բոլորտիքը եղող սենեակ-
ներուն լայնութիւնը՝ չորս կան-
գուն չափեց ։
6 [Բ]Ու սենեակները իրարու վրայ
էին իրեք դստիկոնով, ու թուով
երեսուն. և անոնց գերանները կը
մտնէին տաճարին ան պատին մէջը՝
որ սենեակներուն համար շինուած
էր շուրջանակի, որ անոր կռթընին.
բայց տանը պատին մէջը չէին կռը-
7 թընէր ։ Ու սենեակները ելլելու
համար [Գ]լայնցող ու շրջանակաւոր
սանդուխ մը կար, որ տանը բոլոր-
տիքը՝ վեր ելլելու համար տունը կը
պտըտէր. անոր համար ելլելով՝
տունը կը լայննար. և այսպէս վարի
դստիկոնէն վերի դստիկոնը՝ միջին
8 դստիկոնէն կ'ելլէին ։ Ու շուրջա-
նակի տանը բարձրութիւնը տե-
սայ. սենեակներուն հիմերը՝ [Դ]ամ-
բողջ մէկ եղէգ՝ վեց մեծ կանգուն
9 էր ։ Սենեակներուն պատին լայնու-
թիւնը՝ դուրսէն հինգ կանգուն էր.
ու մնացածը՝ սենեակներուն ներսի
10 միջոցն էր ։ Ու դուրսի սենեակնե-
րուն մէջտեղը՝ տանը բոլորտիքը՝
քսան կանգուն լայն միջոց մը կար ։
11 Ու սենեակներուն մուտքերը մնա-
ցած տեղին կը նայէին. մուտքին
մէկը դէպ 'ի հիւսիս, և մուտքին
մէկը դէպ 'ի հարաւ կը նայէր. ու

Ա Գ Թագ. Զ. 20. Բ Մն. Գ. 8.
Բ Գ Թագ. Զ. 5, 6.
Գ Գ Թագ. Զ. 8.
Դ Գլ. Խ. 5.

Ն. Ք. ՇՀԴ. 574

մնացած տեղին լայնութիւնը՝ շուր-
ջանակի հինգ կանգուն էր ։
12 Ու զատուած տեղին առջևը՝ դէպ
'ի արևմտեան ծայրը եղող շէնքին
լայնութիւնը՝ եօթանասուն կան-
գուն էր. ու շէնքին պատը՝ շուր-
ջանակի հինգ կանգուն լայն, ու
երկայնութիւնը իննսուն կանգուն
13 էր ։ Ու տանը երկայնութիւնը հա-
րիւր կանգուն չափեց. ու զատուած
տեղը, ու շէնքը իր պատերովը՝
14 հարիւր կանգուն երկայն էր ։ Ու
տանը՝ ու զատուած տեղին երեսը
դէպ 'ի արևելք՝ հարիւր կանգուն
լայն էր ։
15 Ու տանը ետևի կողմէն՝ զատուած
տեղին դիմացը եղող շէնքին եր-
կայնութիւնը, և անոր սիւնազարդ
սրահները մէկ կողմէն ու մէկալ կող-
մէն ներքին տաճարին, ու գաւի-
թին սրահներուն հետ հարիւր կան-
16 գուն չափեց ։ Դրանը սեմերը, ու
[Ե]վանդակապատ պատուհանները,
և շուրջանակի ան իրեք շինուածներուն
սեմիցը դիմացը եղող սիւնազարդ
սրահները՝ ամէն կողմէն տախտա-
կամած շինուած էին գետնէն մինչև
պատուհանները. ու պատուհան-
17 ները ծածկուած էին. նաև դրանը
վրան, ու մինչև ներքին տունը, և
դուրսէն, ու բոլոր պատը շուր-
ջանակի ներսէն ու դուրսէն իրենց
չափերովը ։
18 Ու տախտակամածին վրայ քերովբէ-
ներ ու արմաւենիներ քանդա-
կուած էին, ու երկու քերովբէնե-
րուն մէջը արմաւենի մը. ու ամէն
մէկ քերովբէն երկու երես ունէր,
19 [Է]Այսինքն մէկ կողմէն դէպ 'ի ար-
մաւենին մարդու երես՝ ու մէկալ
կողմէն դէպ 'ի արմաւենին առոյգ
առիւծի երես. բոլոր տանը քան-
դակը շուրջանակի այսպէս էր ։
20 Յատակէն մինչև դրանը վրան՝ քե-
րովբէներ ու արմաւենիներ քանդա-
կուած էին, նոյնպէս ալ տաճարին
21 պատին վրայ ։ Տաճարին սեմերը
քառակուսի էին. ու սրբարանին
երեսին երևոյթը՝ մէկալին երևոյթին
պէս էր ։
22 [Ը]Փայտէ սեղանը իրեք կանգուն
բարձր էր. ու երկայնութիւնը եր-
կու կանգուն էր, և անոր անկիւն-
ները իրմէ էին, ու անոր երկայ-
նութիւնը ու քովերը փայտէ էին.
ու անիկայ ինծի ըսաւ. Ասիկայ
է [Թ]Տէրոջը առջևը եղող սեղա-
23 նը ։ [Ժ]Ու տաճարը, ու սրբարանը
24 երկու դուռ ունէին. Ու դռնե-
րը երկերկու փեղկ ունէին. ու
փեղկերը երկուքի կը ծալուէին.
երկու փեղկ մէկը ունէր, ու երկու
25 փեղկ մէկալը ։ Ու անոնց վրայ՝

Ե Գլ. Խ. 16. Հմր 26.
Զ Գ Թագ. Զ. 29.
Է Տես Գլ. Ա. 10.
Ը Ել. Լ. 1.
Թ Ել. Լ. 8.
Ժ Գլ. ԽԴ. 16. Մաղ. Ա. 7, 12.
ԺԱ Գ Թագ. Զ. 31—35.

Ն․ Ք․ ՂՔ․ 574

տաճարին դռներուն վրայ՝ պա-
տերուն վրայի քանդակին պէս՝
քերովբէներ ու արմաւենիներ քան-
դակուած էին․ ու դուրսէն սրա-
հին երեսը՝ փայտէ *սանդուխ մը
26 կար ։ Եւ սրահին քովերը, ու
տանը սենեակներուն մէջ, և սան-
դուխներուն վրայ՝ մէկ կողմէն ու
մէկալ կողմէն՝ [ւ]վանդակապատ
պատուհաններ, ու արմաւենիներ
կային ։

* Կամ՝ վայրագաւիթ
ւ Գլ․ Խ․ 16․ Հմր 16․

ԳԼ․ ԽԲ

1 Քահանայից սենեակները․ 13 անոնց գործածութիւնը․ 19 Արտաքին գաւիթին չափերը ։

1 Ասկէ ետքը զիս դէպ 'ի հիւսիս ե-
ղող ճամբովը արտաքին գաւի-
թը հանեց, և զիս [ա]զատուած
տեղին դիմացը եղող՝ ու դէպ 'ի
հիւսիս նայող շէնքին դիմացի սե-
2 նեակները բերաւ ։ Ան սենեակնե-
րուն հիւսիսային մուտքին առ-
ջևի երկայնութիւնը հարիւր կան-
գուն, ու լայնութիւնը յիսուն
3 կանգուն էր ։ Ներսի գաւիթին
քսան կանգունին դէմ, ու դուրսի
գաւիթին քարայատակին դէմ՝
իրարու դիմացը [բ]իրեք դստիկո-
նով սիւնազարդ սրահներ կային ։
4 Ու սենեակներուն առջևը՝ ներսէն
տասը կանգուն լայն ճեմելիք մը՝
ու մէկ կանգուն ճամբայ մը կար․
և անոնց դուները դէպ 'ի հիւսիս
5 էր ։ Ու վերի սենեակները կարճ
էին․ վասն զի սիւնազարդ սրահ-
ները անոնցմէ՝ այսինքն շէնքին վա-
րի ու միջին սենեակներէն տեղ
6 կ'առնէին ։ Քանզի անոնք իրեք
դստիկոն էին, ու գաւիթներուն
սիւներուն պէս սիւներ չունէին․
անոր համար գետնէն՝ այսինքն վարի
ու միջին սենեակներէն կը նեղնա-
7 յին ։ Ու սենեակներուն դիմացը՝
դուրսի գաւիթին կողմը՝ սենեակ-
ներուն առջևի դուրսի պատին եր-
կայնութիւնը՝ յիսուն կանգուն էր ։
8 Վասն զի դուրսի գաւիթը նայող
սենեակներուն երկայնութիւնը յի-
սուն կանգուն էր․ և ահա տա-
ճարին դիմացը հարիւր կանգուն
9 էր ։ Ու աս սենեակներուն տա-
կէն՝ դուրսի գաւիթէն անոնց եր-
թալու համար՝ արևելեան կողմէն
10 մուտք մը կար ։ Եւ գաւիթին
պարսպին լայնութեանը մէջ դէպ
'ի արևելք՝ ու շէնքին դիմացը՝
զատուած տեղին դիմացը՝ սե-
11 նեակներ կային ։ Եւ [գ]անոնց առ-
ջևը ճամբայ մը կար դէպ 'ի հիւ-
սիս եղող սենեակներուն երևոյթին
պէս, թէ անոնց երկայնութեանը՝
թէ անոնց լայնութեանը՝ և թէ
անոնց բոլոր ելքերուն՝ և անոնց
ձևերուն ու դռներուն կողմանէ ։
12 Նոյնպէս ալ էին դէպ 'ի հարաւ
եղող սենեակներուն մուտքերը․
ճամբուն գլուխը մուտք մը կար,
այսինքն արևելեան ճամբուն բերա-
նը՝ պատին առջևի շիտակ ճամ-
բան ։
13 Եւ ինծի ըսաւ․ Զատուած
տեղին առջևը եղող հիւսիսային
կողմի սենեակները, ու հարաւա-
յին կողմի սենեակները՝ Տէրոջը
մօտեցող քահանաներուն սուրբ
սենեակներն են, ուր որ [դ]ամե-
նասուրբ բաները պիտի ուտեն․
հոն պիտի դնեն ամենասուրբ բա-
ները, ու [ե]հացի ընծան, ու մեղ-
քի պատարագը, և յանցանքի
պատարագը․ քանզի ան տեղը
14 սուրբ է ։ [զ]Երբոր քահանանե-
րը հոն մտնեն, սուրբ տեղէն
դուրսի գաւիթը պիտի չելլեն․
հապա իրենց պաշտօնի զգեստնե-
րը հոն պիտի թողուն, վասն զի
անոնք սուրբ են, և ուրիշ հան-
դերձներ հագնելով՝ ժողովուրդին
վերաբերեալ բաներուն պիտի մօ-
տենան ։
15 Ու երբոր անիկայ ներքին տունը
չափեց լմնցուց, զիս դէպ 'ի ա-
րևելք նայող դուռը հանեց, ու
16 զանիկայ ամէն կողմէն չափեց ։ Ա-
րևելեան կողմը չափի եղէգով՝ շուր-
ջանակի հինգ հարիւր եղէգ չափեց՝
17 չափի եղէգով ։ Հիւսիսային կող-
մը՝ շուրջանակի չափի եղէգով՝ հինգ
18 հարիւր եղէգ չափեց ։ Հարաւա-
յին կողմը չափի եղէգով՝ հինգ
19 հարիւր եղէգ չափեց ։ Արևմտեան
կողմը դարձաւ, ու չափի եղէգով՝
20 հինգ հարիւր եղէգ չափեց ։ Զա-
նիկայ չորս կողմէն չափեց․ անիկայ՝
[է]հինգ հարիւր եղէգ երկայն, ու
հինգ հարիւր եղէգ լայն էր, ու
[ը]պարիսպ ունէր, սուրբ ու անսուրբ
տեղերուն մէջը զատելու համար ։

ա Գլ․ Խա․ 12․ 15․
բ Գլ․ Խա․ 16․
գ Հմր 4․
Ն․ Ք․ ՂՔ․ 574
դ Ղև․ Զ․ 16․ 26․ Խդ․ 9․
ե Ղև․ Բ․ 3․ 10․ Զ․ 14․ 17․ 25․ 29․ Է․ 1․ Ժ․ 13․ 14․ Թու․ ԺԸ․ 9․ 10․
զ Գլ․ Խդ․ 19․
է Գլ․ Խե․ 2․
ը Գլ․ Խ․ 5․

ԳԼ․ ԽԳ

1 Աստուծոյ փառքը նորէն տաճարին մէջ կը դառնայ ։ 7 Աստուծոյ ներկայութեանը հեռանալուն պատճառ Իսրայէլի մեղքն էր ։ 10 Մարգարէն ժողովուրդը կը յորդորէ որ ապաշխարեն, ու տանը օրէնքը պահեն ։ 13 Սեղանին չափերը, 18 և կանոնները ։

1 Եւ զիս դուռը՝ [ա]դէպ 'ի արևելք
2 նայող դուռը տարաւ ։ [բ]Եւ
ահա արևելեան ճամբայէն Իսրայէլի
Աստուծոյն փառքը կու գար․ ու
[գ]անոր ձայնը շատ ջուրերու ձայնին
պէս էր․ [դ]ու երկիրը անոր փառ-
3 քէն լուսաւորուեցաւ ։ Եւ տեսած
տեսիլքս [ե]նման էր ան տեսիլքին,
որն որ տեսայ, երբոր [զ]քաղաքը
աւրելու եկայ․ ու տեսիլքները
[է]Քոբար գետին քովը տեսած տե-

ա Գլ․ Ժ․ 19․ Խա․ 1․ Խզ․ 1․
բ Գլ․ Ժա․ 23․
գ Գլ․ Ա․ 24․ Յայտ․ Ա․ 15․ ԺԴ․ 2․ ԺԹ․ 6․
դ Գլ․ Ժ․ 4․ Յայտ․ ԺԸ․ 1․
ե Գլ․ Ա․ 4․ 28․ Ը․ 4․
զ Երեմ․ Ա․ 10․
է Գլ․ Ա․ 3․ Գ․ 23․

Ն․ Բ․ ԳՔ․ 574

ըՏես Գլ․ Ժ․ 19։ ԽԴ․ 2։
բ Գլ․ Գ․ 12։ 14։ Ը․ 3։
ժ Գ Թագ․ Ը․ 10․ 11․ Գլ․ ԽԴ․ 4։
է Գլ․ Խ․ 3։
ւ Եզ․ ԻԹ․ 45։ Սաղ․ ՂԸ․ 16։ Ճիր․ 14։ Յով․ Զ․ 17։ Յայտ․ Ա․ 14։ Բ Կոր․ Զ․ 16։
Խ Սաղ․ ՂԹ․ 1։
ժ Առ․ ԽԲ․ 2։ Սաղ․ ՃԺ․ 5։
լ Ղև․ ԻԶ․ 30։ Երեմ․ ԺԶ․ 18։
ճ Գլ․ ԼԹ․ 7։
յ Տես Գ Թագ․ ԺԶ․ 14։ Իա․ 4․ 5․ 7։ Գլ․ Ը․ 3։ Իգ․ 39։ ԽԴ․ 7։
ն Հմր 7։
օ Հմր 7։
ք Գլ․ Խ․ 4։
չ Գլ․ Խ․ 2։
ռ Գլ․ Խ․ 5։ Խա․ Տ։

սիլքիս պէս էր․ ու երեսիս վրայ
ինկայ ։
4 Ըև Տէրոջը փառքը դէպ ՚ի
արևելք նայող դրանը ճամբայէն
5 տունը մտաւ ։ Բ Ու Հոգին զիս
վերցուց, և զիս ներքին գաւիթը
տարաւ․ և ահա ժ Տէրոջը փառքը
6 տունը լեցուցեր էր ։ Եւ ձայն մը
լսեցի որ տաճարէն ինծի կը խօսէր․
(ու է իմ քովս մարդ մը կայներ
7 էր․) Ու ինծի ըսաւ․ Որդի մարդոյ՝
ւ Իսրայէլի որդւոյը մէջ յաւիտեան
բնակելու Խ աթոռիս տեղը, և ժ իմ
ոտքերուս պարշապարներուն տեղը
աստ է, ու Իսրայէլի տունը՝ ի-
րենք ու իրենց թագաւորները՝ ի-
րենց պոռնկութիւններովը, ու ի-
րենց թագաւորներուն լ դիերովը՝
իրենց բարձր տեղերուն մէջ՝ ճ այլ
իմ սուրբ անունս պիտի չպղծեն ։
8 յ Վասն զի իրենց սեմերը՝ իմ սե-
մոցս, ու իրենց դրանդիքը՝ իմ
դրանդեացս մօտ դրին, այնպէս որ՝
իմ ու անոնց մէջտեղը միայն մէկ
պատ մը կար․ և իրենց ըրած գար-
շութիւններովը իմ սուրբ անունս
պղծեցին․ ես ալ իմ բարկու-
9 թեամբս սպառեցի զանոնք ։ Հի-
մա թող իրենց պոռնկութիւնը,
ու իրենց թագաւորներուն դիերը
ինծմէ հեռացրնեն, օ ու յաւի-
տեան անոնց մէջը պիտի բնակիմ ։
10 Դուն՝ որդի մարդոյ՝ ք Իսրայէլի
տանը այս տունը ցուցուր, որ
իրենց անօրէնութիւններէն ամչ-
նան․ ու թող անոր գաղափարը
11 չափեն ։ Եւ թէ որ իրենց բոլոր
ըրածներէն ամչնան, տանը ձևը ու
կարգաւորութիւնը, և անոր ել-
քը, ու մուտքը, ու բոլոր ձևերը,
և բոլոր կանոնները, ու բոլոր օ-
րէնքները անոնց ցուցուր․ ու ա-
նոնց աչքերուն առջևը գրէ․ և
անոր բոլոր ձևերը՝ ու բոլոր կա-
նոնները պահեն, ու զանոնք կա-
12 տարեն ։ Աս է տաճարին օրէնքը․
անոր բոլոր սահմանը չուրջանակի
չ լերանը գլխուն վրայ՝ ամենասուրբ
պիտի ըլլայ․ ահա տաճարին օրէն-
քը ասիկայ է ։
13 Եւ ասոնք են սեղանին չափերը՝
կանգունով․ (ռ կանգունը՝ մէկ կան-
գուն ու չորս մատնաչափ է․) ու
խոր տեղը մէկ կանգուն, ու անոր
լայնութիւնը մէկ կանգուն, և անոր
սահմանը անոր եզերքին վրայ չուր-
ջանակի՝ մէկ թիզ մը պիտի ըլլայ․
ու աս պիտի ըլլայ սեղանին հիմը ։
14 Ու գետնին խոր տեղէն մինչև վարի
շրջանակը երկու կանգուն, և անոր
լայնութիւնը մէկ կանգուն պիտի
ըլլայ․ ու պզտիկ շրջանակէն մինչև
մեծ շրջանակը չորս կանգուն, ու
լայնութիւնը մէկ կանգուն պիտի
15 ըլլայ ։ Եւ կրակարանը չորս կան-
գուն բարձր պիտի ըլլայ․ ու կրա-
կարանէն վեր չորս եղջիւր պիտի
16 ըլլայ ։ Եւ ս կրակարանը տասներ-
կու կանգուն երկայն, ու տասներ-
կու կանգուն լայն․ չորս կողմն ալ
հաւասար ըլլալով՝ քառակուսի պի-
17 տի ըլլայ ։ Եւ անոր բոլորտիքը
եղող շրջանակը տասնըչորս կան-
գուն երկայն, ու տասնըչորս կան-
գուն լայն պիտի ըլլայ․ և բոլոր-
տիքը եղող սահմանը կէս կան-
գուն, ու խոր տեղը չուրջանակի
մէկ կանգուն պիտի ըլլայ․ ու ւ ա-
նոր աստիճանները դէպ ՚ի արևելք
պիտի ըլլան ։
18 Եւ ինծի ըսաւ․ Որդի մարդոյ՝
Տէր Եհովան այսպէս կ՚ըսէ․ Ասոնք
պիտի ըլլան սեղանին կանոնները՝
այն օրը որ զանիկայ շինեն, անոր
վրայ ողջակէզներ մատուցանելու,
ու ս անոր վրայ արիւն սրսկելու
համար ։
19 ւ Սադովկի սերունդէն եղող Ղև-
տացի քահանաներուն՝ (որոնք ին-
ծի ծառայութիւն ընելու համար
ինծի պիտի մօտենան, կ՚ըսէ Տէր
Եհովան,) մեղքի պատարագի հա-
մար՝ ղ արջառներէն զուարակ մը
20 պիտի տաս․ Եւ անոր արիւնէն պի-
տի առնես, ու օծելով չորս եղջիւր-
ներուն վրայ, ու շրջանակին չորս
անկիւններուն վրայ, և չուրջանակի
անոր սահմանին վրայ դնես, ու
զանիկայ պիտի սրբես, և անոր
21 համար քաւութիւն ընես ։ Ու
մեղքի պատարագին զուարակը պի-
տի առնես․ և Հսրբարանէն դուրս՝
տաճարին որոշուած տեղը ս պիտի
22 այրուի ։ Ու երկրորդ օրը՝ մեղքի
պատարագի համար՝ այծերէն ա-
նարատ նոխազ մը մատուցանես․
ու սեղանը պիտի սրբեն, ինչպէս
23 որ զուարակով սրբեցին ։ Երբոր
սրբելը լմնցընես, արջառներէն ա-
նարատ զուարակ մը, ու ոչխարնե-
րէն անարատ խոյ մը պիտի մա-
24 տուցանես ․ Եւ զանոնք Տէրոջը
առջևը պիտի մօտեցընես․ ս ու
քահանաները անոնց վրայ աղ պի-
տի ցանեն, ու զանոնք Տէրոջը ող-
25 ջակէզ պիտի մատուցանեն ։ Եօ-
թը օր մեղքի պատարագի համար՝
օրը մէյմէկ նոխազ պիտի մատու-
ցանես․ նաև արջառներէն զուա-
րակ մը, ու ոչխարներէն խոյ մը
պիտի մատուցանեն, որ անարատ
26 պէտք ըլլան ։ Եօթը օր սեղանին
քաւութիւն պիտի ընեն, և զանի-
կայ պիտի սրբեն ու զանիկայ նուի-
27 րեն ։ ս Ու երբոր այն օրերը լմըն-
նան, ութերորդ օրը՝ ու անկէ ետ-

Ն․ Բ․ ԳՔ․ 574

ս Եբրայեցւոց․ Եւ․ ԻԹ․ 1։
ւ Տես Եզ․ Ի․ 26։
ս Ղև․ Ա․ 5։
ւ Ղև․ Խդ․ 15։
ղ Եզ․ ԻԹ․ 10․ 12։ Ղև․ Ը․ 14․ 15։ Գլ․ ԽԵ․ 18․ 19։
Հ Եբր․ ԺԳ․ 11։
ս Եզ․ ԻԹ․ 14։
ս Ղև․ Բ․ 13։
Ելից ԻԹ․ 35․ 36։ Ղև․ Ը․ 33։
ս Տես Ղև․ Թ․ 1։

քը՝ քահանաները սեղանին վրայ
ձեր ողջակէզները ու ձեր խաղա-
ղութեան զոհերը պիտի մատուցա-
նեն, և ես ձեզ պիտի ընդունիմ՝
կ'ըսէ Տէր Եհովան ։

## ԳԼ. ԽԴ.

1 Արեւելեան դուռը միայն իշխանին համար կ'ո-
րոշուի ։ 4 Քահանաները կը յանդիմանուին
սրբարանը պղծելնուն համար ։ 9 Կռապաշտ-
ներուն արգիլուած է քահանայից պաշտօնը
կատարել ։ 15 Սադովկին որդիքը կ'ընդու-
նուին այս գործիս համար ։ 17 Քահանայից
վրայօք պատուէրներ ։

1 Ու զիս սրբարանին դէպ 'ի ա-
րեւելք նայող դուրսի դրանը
ճամբան դարձուց. ու անիկայ գոց
2 էր ։ Եւ Տէրը ինծի ըսաւ. Աս
դուռը գոց պիտի մնայ, պիտի չը-
բացուի. ու անկէ մարդ պիտի
չմտնէ. Քանզի անկէ Իսրայէլին
Տէր Աստուածը մտաւ. անոր հա-
3 մար գոց պիտի մնայ ։ Անիկայ իշ-
խանին համար պիտի ըլլայ. հոն մի-
այն իշխանը պիտի նստի Տէրոջը
առջեւը հաց ուտելու համար. Ա-
նիկայ դրանը սրահին ճամբայէն
պիտի մտնէ, ու նոյն ճամբայէն
պիտի ելլէ ։
4 Եւ զիս հիւսիսային դրանը ճամ-
բայէն տանը առջեւը բերաւ. ու
տեսայ որ Տէրոջը փառքը
Տէրոջը տունը լեցուցեր էր. Ու
5 երեսիս վրայ ինկայ ։ Եւ Տէրը ին-
ծի ըսաւ. Որդի մարդոյ՝ Տէրոջը
տանը բոլոր կանոններուն, ու անոր
բոլոր օրէնքներուն վրայով՝ քեզի
ամէն բաածս սրտիդ մէջը դիր, ու
աչքերովդ նայէ, և ականջներովդ
լսէ, ու տանը մուտքերը ու սրբա-
րանին բոլոր ելքերը աղէկ դիտէ.
6 Եւ ապստամբներուն՝ Իսրայէլի
տանը ըսէս. Տէր Եհովան այսպէս
կ'ըսէ. Ա՛լ հերիք է ձեզի ձեր բո-
լոր պղծութիւնները՝ ով Իսրայէլի
7 տուն, Որ դուք՝ սրտով անթլի-
փատ, ու մարմնով անթլփատ օ-
տարազգիներ մտցուցիք, որ իմ
սրբարանիս մէջը ըլլան, ու իմ
տունս պղծեն, երբոր դուք իմ
հացս՝ ճարպը ու արիւնը կը մա-
տուցանէիք. ու ձեր բոլոր պղծու-
թիւններէն 'ի զատ՝ անոնք իմ ուխ-
8 տըս խափանեցին ։ Եւ իմ սուրբ
բաներուս պահպանութիւնը չպա-
հեցիք. հապա իմ սրբարանիս մէջ
ձեր ուզածին պէս իմ պահպանու-
թեանս վրայ պահապաններ դրիք ։
9 Տէր Եհովան այսպէս կ'ըսէ. Իս-
րայէլի որդւոցը մէջ եղող բոլոր օ-
տարազգիներէն՝ սրտով անթլփատ
ու մարմնով անթլփատ բնաւ մէկ
օտարազգի մը իմ սրբարանս պիտի
10 չմտնէ ։ Մանաւանդ Ղևտացինե-
րը՝ որ ինծմէ հեռացան, երբոր
Իսրայէլի որդիքը ինծմէ մոլորեցան,
ու իրենց կուռքը ետեւէն գացին,
իրենց անօրէնութիւնը պիտի կը-
11 րեն. Եւ իմ սրբարանիս մէջ՝ տա-
նը դռները որոշուած սպասաւոր-
ներ, ու տաճարին սպասաւորները
պիտի ըլլան. ժողովուրդին համար
ողջակէզները ու զոհերը անոնք
պիտի մորթեն, ու անոնց ծառա-
յութիւն ընելու համար՝ անոնց
12 առջեւը անոնք պիտի կայնին ։ Ո-
րովհետեւ անոնց համար, անոնց
կուռքերուն առջեւը ծառայութիւն
ըրին, ու Իսրայէլի տանը՝ գայ-
թակղութիւն ու անօրէնութեան
պատճառ եղան, անոր համար անոնց
վրայով իմ ձեռքս վերցուցի՝ կ'ը-
սէ Տէր Եհովան, որ իրենց անօրէ-
13 նութիւնը պիտի կրեն. Եւ ինծի
պիտի չմօտենան՝ ինծի քահանա-
յութիւն ընելու, ու իմ բոլոր
սուրբ բաներուս և ամենասուրբ
բաներուս մօտենալու. հապա ի-
րենց անարգանքը, ու իրենց ըրած
14 պղծութիւնները պիտի կրեն ։ Սա-
կայն զանոնք՝ տանը պահպանու-
թեանը վրայ պահապան պիտի դը-
նեմ, անոր ամէն ծառայութեանը
համար, ու անոր մէջը ըլլալու ա-
մէն գործին համար ։
15 Բայց Ղևտացի քահանաները՝
Սադովկի որդիքը, որոնք իմ սըր-
բարանիս պահպանութիւնը պա-
հեցին, երբոր Իսրայէլի որդիքը
ինծմէ մոլորեցան, անոնք ինծի
ծառայութիւն ընելու համար ինծի
պիտի մօտենան, և ճարպը ու ա-
րիւնը ինծի մատուցանելու համար՝
անոնք իմ առջեւս պիտի կայնին՝
16 կ'ըսէ Տէր Եհովան ։ Անոնք իմ
սրբարանս պիտի մտնեն, ու ինծի
ծառայութիւն ընելու համար՝ ա-
նոնք պիտի մօտենան իմ սեղանիս,
և իմ պահպանութիւնս պիտի պա-
17 հեն ։ Ու երբոր ներսի գաւիթին
դռներէն մտնեն, կտաւէ զգեստ-
ներ պիտի հագնին, ու ներսի գա-
ւիթին դռները, ու ներսը ծառա-
յութիւն ըրած ատեննին՝ վրանին
18 բուրդ պիտի չհագնին. Իրենց
գլուխներուն վրայ կտաւէ ապարօշ-
ներ ըլլայ, ու մէջքերնին՝ կտաւէ
վարտիքներ ըլլայ. քրտնցընող
19 բան պիտի չհագնին ։ Ու երբոր
դուրսի գաւիթը ժողովուրդին ել-
լեն, իրենց պաշտօնի զգեստները
պիտի հանեն, ու զանոնք սուրբ
սենեակներուն մէջը դնեն, և ուրիշ
զգեստներ պիտի հագնին, որպէս
զի իրենց զգեստներովը ժողովուր-
20 դը չսրբեն ։ Եւ գլուխնին պիտի
չածիլեն, ոչ ալ վարսքերնին եր-

Ն. Ք. ԳՃ. 574
ա Յոբ. ԽԲ. 8 ։ Գլ. Ի. 40, 41 ։ Հռով. ԺԲ. 1 ։ Ա Պետ. Բ. 5 ։
բ Գլ. ԽԳ. 1 ։
գ Գլ. ԽԳ. 4 ։
դ Ծն. ԼԱ. 54 ։ Ա Կոր. Ժ. 18 ։
ե Գլ. ԽԶ. 2, 8 ։
զ Գլ. Գ. 23 ։ ԽԳ. 5 ։
է Գլ. Ա. 28 ։
ը Գլ. Խ. 4 ։
թ Գլ. Բ. 5 ։
ժ Գլ. ԽԵ. 9 ։ Ա Պետ. Դ. 3 ։
ի Ղև. ԻԶ. 41 ։ Բ Օր. Ժ. 16 ։ Գործ. Է. 51 ։
լ Ղև. ԻԲ. 25 ։
խ Գլ. ԽԳ. 8 ։ Հմր 9 ։ Գործ. ԻԱ. 28 ։
ծ Ղև. ԻԱ. 6, 8, 17, 21 ։
կ Ղև. Գ. 16 ։ ԺԷ. 11 ։
հ Ղև. ԻԲ. 2, 3 ։
ձ Հմր 14, 16 ։ Գլ. Ի. 45 ։
ղ Հմր 7 ։
ճ Տես Դ Թագ. ԻԳ. 8, 9 ։ Բ Մն. ԻԹ. 4, 5 ։ Գլ. ԽԳ. 11 ։

Ն. Ք. ԳՃ. 574
մ Ա Մն. ԻԶ. 1 ։
յ Բ Մն. ԻԹ. 34 ։
ն Թւ. ԺԶ. 9 ։
շ Ես. Թ. 16 ։ Գլ. ԺԴ. 3, 4 ։ Մաղ. Բ. 8 ։
ո Սաղ. ՃԶ. 26 ։
չ Դ Թագ. ԻԳ. 9 ։ Թւ. ԺԸ. 3 ։
պ Գլ. ԼԲ. 30 ։ ԼԶ. 7 ։
ջ Թւ. ԺԸ. 4 ։ Ա Մն. ԻԳ. 28, 32 ։
ռ Գլ. Խ. 46 ։ ԽԳ. 19 ։
ս Ա Թագ. Բ. 35 ։
վ Հմր 10 ։
տ Հմր 7 ։
ր Բ Օր. Ժ. 8 ։
ց Գլ. ԽԱ. 22 ։
ւ Ել. ԻԸ. 39, 40, 43 ։ ԼԹ. 27, 28 ։
* Եբր. չեղէ.
փ Ել. ԻԸ. 40, 42 ։ ԼԹ. 28 ։
ք Գլ. ԽԲ. 14 ։
օ Գլ. ԽԶ. 20 ։ Տես Ել. ԼԹ. 37 ։ Լ. 29 ։ Ղև. Զ. 27 ։ Մատ. ԻԳ. 17, 19 ։
ֆ Ղև. ԻԱ. 5 ։

Ն. Ք. ՉԵ. 574

կընցընեն . հապա միայն գլուխնուն
21 մազերը փորրեն ։ Ու բնաւ մէկ
քահանայ մը գինի չխմէ՝ երբոր ներ-
22 քին գաւիթը կը մտնէ ։ Ու որ-
բեւարին՝ և արձակուածը իրենց կնիկ
չառնեն . հապա Իսրայէլի տանը
սերունդէն եղող կոյսը , կամ քա-
հանայէ մը որբեւարի մնացած կնիկը
23 առնեն ։ Ու իմ ժողովուրդիս՝
սուրբ ու անսուրբ բաներուն տար-
բերութիւնը պիտի սորվեցընեն .
և անմաքուրին ու մաքուրին տար-
24 բերութիւնը անոնց գիտցընեն ։ Ու
դատերու վրայ անոնք պիտի կե-
նան դատաստան ընելու համար ,
ու իմ իրաւունքներուս համեմատ
զանոնք դատեն , և իմ բոլոր տօնե-
րուս մէջը՝ իմ օրէնքներս ու կանոն-
ներս պիտի պահեն , ու իմ շա-
25 բաթներս սրբեն ։ Եւ մարդու
մեռելի քով չերթան՝ որ պղծուին .
հապա միայն հօր համար , կամ մօր
համար , կամ տղու համար , կամ
աղջկան համար , եղբօր համար ,
կամ չամուսնացած քրոջ համար
26 պղծուին ։ Ու մէկը սրբուելէն
ետքը եօթը օր պիտի համրէ իրեն ։
27 Եւ անիկայ սրբարանին մէջ ծառա-
յութիւն ընելու համար՝ ներսի
գաւիթը սրբարանը մտած օրը՝
անիկայ իր մեղքի պատարագը պի-
տի մատուցանէ , կ՚ըսէ Տէր Եհո-
վան ։
28 Եւ ասիկայ անոնց ժառանգու-
թիւն ըլլայ . անոնց ժառանգու-
թիւնը ես եմ . ու Իսրայէլի մէջ
անոնց կալուածք չտաք . անոնց կա-
29 լուածքը ես եմ ։ Հացի ընծան ,
ու մեղքի պատարագը , և յանցան-
քի պատարագը անոնք պիտի ու-
տեն . ու Իսրայէլի մէջ ամէն նուէր
30 անոնց պիտի ըլլայ ։ Եւ ամէն տե-
սակ բանին բոլոր երախայրիներուն
առջինը , ու ձեր բոլոր ընծաներէն
ամէն բանի ընծային բոլորը՝ քահա-
նային պիտի ըլլայ . ու ձեր խմոր-
ներուն երախայրին քահանային
պիտի տաք , որ քու տանդ վրայ
31 օրհնութիւն * բերես ։ Քահանա-
ները բնաւ մեռած կամ գազանա-
բեկ անասունի մը միս պիտի չու-
տեն , թէ՛ թռչուն ըլլայ ան և թէ՛
չորքոտանի ։

Ղև. Ժ. 9. Ղև. ԻԱ. 7, 13, 14. Ղև. Ժ. 10, 11. Գլ. ԻԲ. 26. Մաղ. Բ. 7. Բ Օր. ԺԷ. 8, Ա. Բ Մն. ԺԹ. 8, 10. Տես Գլ. ԻԲ. 26. Ղև. ԻԱ. 1, Ա. Թու. Զ. 10, ԺԹ. 11, Ա. Հմր 17. Ղև. Դ. 3. Թու. ԺԸ. 20. Բ Օր. Ժ. 9. ԺԸ. 1, 2. Յես. ԺԳ. 14, 33. Ղև. Զ. 18. 29. Է. 6. Ղև. ԻԷ. 21, 28, բաղդատէ՝ Թու. ԺԸ. 14 ին հետ. Ել. ԻԳ. 2. ԻԲ. 29, 30. ԻԳ. 19. Թու. Գ. 13. ԺԸ. 12, 13. Թու. ԺԵ. 20. Նեեմ. Ժ. 37. Առակ. Գ. 9, 10. Մաղ. Գ. 10. *Կամ՝ բերէ. Ել. ԻԲ. 31. Ղև. ԻԲ. 8.

## ԳԼ. ԽԵ

1 Սրբարանին համար , 6 քաղաքին համար , 7 և իշխանին համար երկրէն որոշուելու բաժինը ։ 9 Իշխանին համար պատուէրներ ։

1 Ու երբոր երկիրը վիճակով ժա-
ռանգութիւն բաժնէք , երկրէն
քսանուհինգ հազար եղէգ երկայ-
նութեամբ , ու տասը հազար լայ-
նութեամբ՝ սուրբ ընծայ մատու-
ցանէք Տէրոջը . ասիկայ շուրջա-
նակի իր բոլոր սահմաններուն մէջը
2 սուրբ ըլլայ ։ Ասկէ քառակուսի
չափուած՝ հինգ հարիւրով հինգ
հարիւրը սրբարանին համար ըլլայ .
ու անիկայ՝ շուրջանակի յիսուն
կանգուն արուարձան ունենայ ։
3 Եւ աս չափով՝ երկայնութիւնը
քսանուհինգ հազար , ու լայնու-
թիւնը տասը հազար չափես . ու
անոր մէջը պիտի ըլլայ սրբարանը՝
4 ամենասուրբ տեղը ։ Ասիկայ Տէ-
րոջը ծառայութիւն ընելու մօտե-
ցող սրբարանի պաշտօնեաներուն
քահանաներուն համար սուրբ ըլ-
լայ երկրէն , որ անոնց տուներու
համար տեղ մը , ու սրբարանին
համար սուրբ տեղ մը ըլլայ ։
5 Եւ տանը ծառայութիւնը ընող
Ղեւտացիները քսանուհինգ հա-
զար երկայնութեամբ ու տասը հա-
զար լայնութեամբ կալուածք պի-
տի ունենան , քսան սենեակ ։
6 Եւ հինգ հազար լայնութեամբ
ու քսանուհինգ հազար երկայնու-
թեամբ՝ քաղաքին կալուածքը պի-
տի տաք՝ սրբարանին ընծային քո-
վը . ասիկայ բոլոր Իսրայէլի տանը
ըլլայ ։
7 Եւ իշխանին կալուածքը սուրբ
ընծային , ու քաղաքին կալուած-
քին մէկ կողմէն ու միւս կողմէն ,
սուրբ ընծային , և քաղաքին կա-
լուածքին դիմացը՝ արեւմտեան ծայ-
րէն դէպ ՚ի արեւմուտք՝ ու արեւե-
լեան ծայրէն դէպ ՚ի արեւելք ըլլայ .
ու երկայնութիւնը՝ արեւմտեան
սահմանէն մինչև արեւելեան սահ-
մանը՝ մէկ բաժիններուն մէկուն
8 հետ հաւասար ըլլայ ։ Իսրայէլի մէջ՝
երկրէն ասիկայ անոր կալուածք ըլ-
լայ . ու իմ իշխաններս մէյմըն ալ
իմ ժողովուրդս չհարստահարեն .
ու մնացած երկիրը՝ Իսրայէլի տանը
տրուի իրենց ցեղերուն համեմատ ։
9 Տէր Եհովան այսպէս կ՚ըսէ . Ա՛լ
հերիք է ձեզի՝ ով Իսրայէլի իշ-
խանները , զրկանքը ու յափշտա-
կութիւնը վերցուցէ՛ք , և իրաւունք
ու արդարութիւն ըրէ՛ք . իմ ժողո-
վուրդէս ձեր բռնի պահանջմունք-
ները վերցուցէ՛ք՝ կ՚ըսէ Տէր Եհո-
10 վան ։ Ձեր կշիռքները արդար՝
ձեր արդուն արդար ու ձեր մարը
11 արդար ըլլայ ։ Արդուն ու մարը
մէկ չափ ըլլան , որ մարը՝ քորին
տասներորդը պարունակէ , ու ար-
դուն ալ քորին տասներորդը .
քորին նայելով պիտի ըլլայ անոնց
12 չափը ։ Եւ սիկղը քսան կերատ
պիտի ըլլայ . ձեր մնասը՝ քսան
սիկղ , քսանուհինգ սիկղ , տաս-
նուհինգ սիկղ պիտի ըլլայ ։

Ն. Ք. ՉԵ. 574

Գլ. ԽԲ. 20. Կամ՝ չափէն. Գլ. ԽԸ. 10. Հմր 1. Գլ. ԽԸ. 10, Ա. Գլ. ԽԸ. 13. Տես Գլ. Խ. 17. Գլ. ԽԸ. 15. Գլ. ԽԸ. 21. Գլ. ԽԶ. 18. Տես Երեմ. ԻԲ. 17. Գլ. ԻԲ. 27. Գլ. ԽԴ. 6. Երեմ. ԻԲ. 3. Ղև. ԺԹ. 35, 36. Առակ. ԺԱ. 1. Ել. Լ. 13. Ղև. ԻԷ. 25. Թու. Գ. 47.

Ն. Ք. ԳՔ. 574

13 Ձեր մատուցանելու ընծան աս-
կայ ըլլայ. ցորենի քոռէն արդուին
վեցերորդ մասը, ու գարիի քոռէն՝
14 արդուին վեցերորդ մասը. Ու եղին
կանոնք ասկայ ըլլայ. եղին մարէն՝
մարին տասներորդը ամէն քոռէն,
այսինքն ամէն խոմէրէն, որ տասը
մար կը պարունակէ, վասն զի տասը
15 մարը մէկ խոմէր մըն է. Եւ Իս-
րայէլին ջրարբի արօտներուն հօտե-
րէն՝ երկու հարիւրէն մէկ ոչխար։
Ասոնք պէտք մատուցանեն իբրև հացի
ընծայ, ու ողջակէզ, և խաղաղու-
թեան զոհ, որ [Լ]իրենց համար քա-
ւութիւն ըլլայ՝ կ'ըսէ Տէր Եհովան։
16 Երկրին բոլոր ժողովուրդը՝ աս ըն-
ծան Իսրայէլի մէջ իշխան եղո-
ղին տալու պարտաւոր պիտի ըլ-
լան։
17 Եւ տօներու՝ ու ամսագլուխներու՝
ու շաբաթներու մէջ՝ Իսրայէլի տա-
նը ամէն հանդիսաւոր օրերուն մէջ՝
ողջակէզները, ու հացի ընծան,
և թափելու նուէրը իշխանին վրայ
պիտի ըլլայ. մեղքի պատարագը,
ու հացի ընծան, ու ողջակէզը, և
խաղաղութեան զոհը՝ անիկայ պի-
տի մատուցանէ՝ Իսրայէլի տանը
քաւութիւն ընելու համար։
18 Տէր Եհովան այսպէս կ'ըսէ.
Առջի ամսուն առջի օրը՝ արջառնե-
րէն մէկ անարատ զուարակ մը առ-
19 նես, ու [Հ]սրբարանը մաքրես։ [Յ]Եւ
քահանան մեղքի պատարագին ա-
րիւնէն պիտի առնէ, և տանը սե-
մոցը վրայ, ու սեղանին շրջանակին
չորս անկիւններուն վրայ, և ներքին
գաւիթին դրանը սեմոցը վրայ դնէ։
20 Ամսուն եօթներորդ օրն ալ՝ [Ն]սխա-
լած կամ անմիտ մարդու համար
այնպէս ընես. և տանը համար
քաւութիւն պիտի ընէք։
21 [Շ]Առջի ամսուն չորեքտասանե-
րորդ օրը՝ ձեզի զատիկ ըլլայ. եօթը
օր տօն պէտք պահուի, ու բաղարջ
22 ուտուի. Եւ ան օրը իշխանը ի-
րեն համար, ու երկրին բոլոր ժո-
ղովրդեանը համար՝ [Ո]մէկ զուարակ
մը պիտի մատուցանէ իբրև մեղքի
23 պատարագ. Ու [Չ]տօնին եօթը օրը
Տէրոջը ողջակէզ պիտի մատուցա-
նէ, ան եօթը օրուան մէջ՝ օրը
եօթը զուարակ, ու եօթը անարատ
խոյ, և ամէն օր այծերէն [Պ]մէկ նո-
խազ մը իբրև մեղքի պատարագ.
24 [Ջ]Ու ամէն մէկ զուարակին համար՝
մէկ արդու մը, և ամէն մէկ խոյին
համար՝ մէկ արդու մը հացի ընծայ,
ու ամէն մէկ արդուին համար՝
25 մէկ հիմէն եղ մատուցանէ։ Նոյն-
պէս ալ եօթներորդ ամսուն [Ռ]հնգե-
տասաներորդ օրը՝ [Ս]տօնին ատենը
եօթը օր՝ աս մեղքի պատարագին,

Լ Ղև. ա. 4։
Հ Ղև. ժզ. 16։
Յ Գլ. խգ. 20։
Ն Ղև. դ. 27։
Շ Ել. ժբ. 18։ Ղև. իգ. 5. 6։ Թուոց. թ. 2. 3։ իը. 16. 17։ Բ Օր. ժզ. 1. Ա։
Ո Ղև. դ. 14։
Չ Ղև. իգ. 8։
Պ Տես Թուոց. իը. 15. 22. 30։ իթ. 5. 11. 16. 19. Ա։
Ջ Գլ. խզ. 5. 7։
Ռ Ղև. իգ. 33. Ա։ Թուոց. իթ. 12։ Բ Օր. ժզ. 13։

ողջակէզին, հացի ընծային, ու ե-
ղին պէս պիտի մատուցանէ։

ԳԼ. ԽԶ

1 Իշխանին, 9 և ժողովուրդին երկրպագութեա-
նը վերաբերեալ պատուէրներ։ 16 Իշխանին
ժառանգութեանը վրայով կանոն մը։ 19 Զո-
հերը եփելու ու եփելու գաւիթները։

1 Տէր Եհովան այսպէս կ'ըսէ. Ներ-
քին գաւիթին դէպ 'ի արևելք
նայող դուռը՝ գործի վեց օրերը գոց
ըլլայ, ու շաբաթ օրը բացուի, ու
2 ամսագլխուն օրը բացուի։ [Տ]Եւ
իշխանը ան դրանը սրահին ճամ-
բայէն դուրսէն պիտի մտնէ, ու
դրանը սեմոցը քովը կայնի. և քա-
հանաները՝ անոր ողջակէզը, ու խա-
ղաղութեան զոհերը պիտի մա-
տուցանեն. ու անիկայ դրանը սե-
մին վրայ երկրպագութիւն պիտի
ընէ՝ ու ելլէ. և ան դուռը մինչև
3 իրիկուն պիտի չգոցուի։ Ու երկ-
րին ժողովուրդը՝ շաբաթ օրերը ու
ամսագլուխները Տէրոջը առջևը
աս դրանը մուտքին մէջ երկրպա-
գութիւն պիտի ընեն։
4 Եւ [Ր]իշխանին շաբաթ օրը Տէ-
րոջը մատուցանելու ողջակէզը՝ վեց
անարատ գառն, ու մէկ անարատ
5 խոյ ըլլայ։ [Ց]Եւ խոյին համար հացի
ընծայ՝ մէկ արդու մը, ու գառանց
համար հացի ընծայ՝ [Ւ]ձեռքէն եկա-
ծը, և ամէն մէկ արդուի համար
6 մէկ հիմէն եղ մատուցանէ։ Ու ամ-
սագլխուն օրը՝ արջառներէն մէկ
անարատ զուարակ մը, ու վեց
գառն, ու մէկ խոյ մը, որոնք ան-
7 արատ պիտի ըլլան։ Եւ զուա-
րակին համար մէկ արդու մը, ու
խոյին համար մէկ արդու մը հացի
ընծայ մատուցանէ, ու գառանց
համար՝ ինչ որ ձեռքէն կու գայ,
և ամէն մէկ արդուի համար՝ մէկ
հիմէն եղ ըլլայ։
8 [Փ]Ու երբոր իշխանը գայ, դրանը
սրահին ճամբայէն մտնէ, և նոյն
9 ճամբայէն ելլէ։ Ու երկրին ժողո-
վուրդը՝ [Ք]հանդիսաւոր օրերուն մէջ
երկրպագութիւն ընելու համար
Տէրոջը առջևը եկած ատենին,
հիւսիսային դրանը ճամբայէն մտ-
նողը՝ հարաւային դրանը ճամբա-
յէն ելլէ, ու հարաւային դրանը
ճամբայէն մտնողը՝ հիւսիսային
դրանը ճամբայէն ելլէ. մտած
դրանը ճամբայէն չդառնայ, հապա
10 անոր դիմացինէն ելլէ։ Եւ իշխա-
նը՝ անոնց մտած ատենը՝ անոնց
հետը մտնէ, ու անոնց ելած ատե-
նը՝ անոնց հետը ելլէ։
11 Եւ տօներու մէջ, ու հանդիսա-
ւոր օրերու մէջ [Փ]հացի ընծան՝ ամէն
զուարակի համար մէկ արդու մը,

Ն. Ք. ԳՔ. 574
Տ Գլ. խդ. 3։ Հմր 8։
Ր Գլ. խե. 17։
Ց Գլ. խե. 24։ Հմր 7. 11։
Ւ Բ Օր. ժզ. 17։
Փ Հմր 2։
Ք Ել. իգ. 14—17։ Բ Օր. ժզ. 16։
Փ Հմր 5։

Ն․ Ք․ ԴՔ․ 574

և ամէն խոյի համար մէկ արդու մը
ըլլայ , ու գառանց համար՝ ձեռքէն
եկածը . ու ամէն մէկ արդուի հա-
12 մար մէկ հիմէն եղ ըլլայ ։ Եւ թէ
որ իշխանը մէկ կամաւոր ողջակէզ
մը , կամ մէկ կամաւոր խաղաղու-
թեան զոհ մը Տէրոջը մատուցա-
նելու ըլլայ , Ըդէպ 'ի արևելք
նայող դուռը անոր բանան . ու
անիկայ իր ողջակէզը , ու խաղա-
ղութեան զոհը մատուցանէ՝ ինչ-
պէս որ շաբաթ օրը կը մատու-
ցանէ , ու ելլէ . և անոր ելլելէն
ետքը դուռը գոցեն ։
13 Բ Ու ամէն օր մէկ տարեկան ան-
արատ գառնուկ մը Տէրոջը ող-
ջակէզ մատուցանես . զանիկայ
14 ամէն առտու մատուցանես . Եւ
անոր հետ ամէն առտու՝ արդուին
վեցերորդ մասը հացի ընծայ մա-
տուցանես , ու հիմէնին երրորդ
մասը եղ՝ նաշիհին հետ խառնելու
համար . ասիկայ յաւիտենական
կանոնով Տէրոջը մշտնջենաւոր
15 հացի ընծայ ըլլայ ։ Եւ գառնու-
կը , ու հացի ընծան , ու եղը՝
ամէն առտու մատուցանեն . ա-
սիկայ մշտնջենաւոր ողջակէզ ըլլայ ։
16 Տէր Եհովան այսպէս կ'ըսէ .
Երբոր իշխանը իր որդւոցը մէկուն
պարգև տայ , անոր ժառանգու-
թիւնը անոր որդւոցը ըլլայ . ա-
նիկայ ժառանգութեան կալուածք
17 մը ըլլայ անոնց . Իսկ երբոր իր
ժառանգութենէն՝ իր ծառանե-
րուն մէկուն պարգև տայ , ան
ատենը անիկայ մինչև Ժ թողու-
թեան տարին անորը պիտի ըլլայ .
ետքը իշխանին պիտի դառնայ .
վասն զի անոր ժառանգութիւնը
միայն իր որդւոցը պիտի ըլլայ ։
18 Եւ Է իշխանը ժողովուրդին ժա-
ռանգութենէն չառնէ , զանոնք
իրենց կալուածքէն զրկելով . իր
որդւոցը՝ իր կալուածքէն ժառան-
գութիւն տայ , որպէս զի իմ ժո-
ղովուրդս՝ ամէն մէկը իր կալուած-
քէն չցրուի ։
19 Եւ զիս դրանը քովը եղող մուտ-
քէն քահանաներուն դէպ 'ի հիւ-
սիս նայող սուրբ սենեակները տա-
րաւ . և ահա հոն՝ ետևի կողմերը
դէպ 'ի արևմուտք մէկ տեղ մը
20 կար . Ու ինծի ըսաւ . Ասիկայ
ան տեղն է՝ ուր որ քահանաները
յանցանքի պատարագին , ու մեղ-
քի պատարագին միսը Ե պիտի խա-
շեն , ու հոն հացի ընծան Ի պիտի
եփեն , որ չըլլայ թէ դուրսի գա-
ւիթը հանեն , ու Ծ ժողովուրդը
21 սրբեն ։ Եւ զիս դուրսի գաւիթը
հանեց . ու զիս գաւիթին չորս
անկիւններէն անցուց . և ահա

Ը Գլ․ խդ․ 3․ Հմր․ 2․
Բ Ել․ իԹ․ 38․ Թու․ իԸ․ 3․
Ժ Ղև․ իե․ 10․
Է Գլ․ խե․ 8․
Ե Բ Մն․ լե․ 13․
Ի Ղև․ Բ․ 4․ 5․ 7․
Ծ Գլ․ խդ․ 19․

գաւիթին ամէն մէկ անկիւնը՝ մէյ-
22 մէկ գաւիթ կար ։ Գաւիթին
չորս անկիւններուն մէջ քառասուն
կանգուն երկայնութեամբ , ու եր-
սուն լայնութեամբ՝ *շուրջանա-
կի գոցուած" գաւիթներ կային .
չորսին չափը մէկ էր անկիւննե-
23 րուն մէջ ։ Եւ անոնց բոլորտիքը՝
չորսին ալ բոլորտիքը՝ շէնքերու
կարգ մը կար . ու այն կարգերուն
տակը շուրջանակի եփարաններ
24 շինուած էին ։ Ու ինծի ըսաւ .
Ասոնք եփողներուն տեղերն են ,
ուր որ տանը պաշտօնեաները ժո-
ղովրդեան զոհը Ս պիտի եփեն ։

## ԳԼ․ ԽԷ

1 Սուրբ ջուրերուն տեսիլքը . 6 անոնց զօրու-
թիւնը . 13 Երկրին սահմանները . 22 անոր
վիճակով բաժնուիլը ։

1 Ու զիս նորէն տանը դրանը առ-
ջևը բերաւ . և ահա արևելեան
կողմէն տանը սեմին տակէն Ա ջու-
րեր կ'ելլէին . քանզի տանը երեսը՝
դէպ 'ի արևելք էր . ու ջուրերը
տանը աջ կողմին տակէն՝ սեղանին
2 հարաւային կողմէն կ'իջնէին ։ Եւ
զիս հիւսիսային դրանը ճամբայէն
հանեց , ու զիս դուրսի ճամբան՝
դուրսի դրանը արևելք նայող ճամ-
բան պտըտցուց . և ահա աջ կող-
մէն ջուրեր կը վազէին ։
3 Բ Ան մարդը որ իր ձեռքը լար ու-
նէր , դէպ 'ի արևելք ելաւ , ու
հազար կանգուն չափեց , և զիս
ջուրերէն անցուց , ու ջուրերը մին-
4 չև դարշապարներս կ'ելլէին . Հա-
զար ևս չափեց , ու զիս ջուրերէն
անցուց . ու ջուրերը մինչև ծուն-
կերս կ'ելլէին . հազար ևս չափեց ,
ու զիս ջուրերէն անցուց , ու ջու-
5 րերը մինչև մէջքս կ'ելլէին . Նորէն
հազար ալ չափեց . ու անանց գետ
մը եղած էր , որ չէի կրնար անց-
նիլ . վասն զի ջուրերը յորդեր
էին . †ու անանց գետ մը եղեր էին ,
ուսկից որ մարդ չէր կրնար անցնիլ
բայց միայն լողալով" ։
6 Ան ատենը ինծի ըսաւ . Տեսա՞ր՝
որդի մարդոյ . և զիս տարաւ՝ ու
7 գետին եզերքը պտըտցուց ։ Եւ
քանի որ հոն կը պտըտէի , տեսայ
որ գետին եզերքը մէկ կողմէն ու
մէկալ կողմէն խիստ շատ ‡ ծառեր
8 կային ։ Եւ ինծի ըսաւ . Աս ջու-
րերը արևելեան կողմը կ'ելլեն , ու
անապատը կ'իջնեն , ու ծովը կ'եր-
թան . և ծովը ելլելով՝ անոր ջուրե-
9 րը բժշկութիւն կը գտնեն ։ Եւ
‡գետին ամէն գացած տեղը՝ ամէն
շարժուն կենդանիները պիտի ապ-
րին . ու ձուկերը խիստ շատ պիտի
ըլլան . քանզի աս ջուրերը հոն

Ն․ Ք․ ԴՔ․ 574
* Կամ՝ պըզտիկ
Ս Տես Հմր 20․
Ա Յովել․ Գ․ 18․ Զաք․ ԺԴ․ 1․ ԺԴ․ 8․ Յայտ․ ԻԲ․ 1․
Բ Գլ․ Խ․ 3․
† Եբր․ լողալու ջուրեր․ անանցանելի գետ մը ելեր էին․
‡ Հմր 12․ Յայտ․ ԻԲ․ 2․
‡ Կամ՝ երկու գետերուն․

Ն . ք . գ Ք . 574

պիտի երթան . ու գետին ամէն
գացած տեղը՝ բժշկութիւն պիտի
10 ըլլայ , ու պիտի ապրին ։ Եւ անոր
վրայ՝ Ենգադդիէն մինչև Ենեգլա-
յիմ ձկնորսներ պիտի կայնին . ուռ-
ուռկաններ փռելու տեղ պիտի ըլ-
լայ . ձուկերը տեսակ տեսակ պիտի
ըլլան . Մեծ ծովուն ձուկերուն
11 պէս խիստ շատ պիտի ըլլան ։ Բայց
անոր տղմային տեղուանքը ու ճա-
խինները բժշկութիւն պիտի չգըտ-
նեն . անոնք աղի համար պիտի ո-
12 րոշուին ։ Ու գետին եզերքը՝ մէկ
կողմէն ու միւս կողմէն՝ ամէն
տեսակ պտղաբեր ծառեր պիտի
բուսնին , Անոնց տերևը պիտի չը-
թառամի , ու պտուղը չհատնի .
ամէն ամիս նորէն պտուղ պիտի
տան . վասն զի անոր ջուրերը սըր-
բարանէն կ'ելլեն . և անոնց պտուղը՝
կերակուրի համար , ու տերևները՝
բժշկութեան համար պիտի ըլլան ։
13 Տէր Եհովան այսպէս կ'ըսէ . Աս
է երկրին սահմանը՝ որ դուք պիտի
ժառանգէք Իսրայէլի տասուերկու
ցեղերուն համեմատ . ( Յովսէփը
14 երկու բաժին պիտի ունենայ . ) Ու
զանիկայ ամէն մարդ իր եղբօրը
պէս պիտի ժառանգէ . վասն զի
Իմ ձեռքս վերցուցի որ զանիկայ
ձեր հայրերուն տամ . և աս երկիրը
ձեզի ժառանգութիւն պիտի իյ-
15 նայ ։ Ու երկրին սահմանը աս է .
Հիւսիսային կողմը՝ Մեծ ծովէն
Եթլոնի ճամբան՝ մինչև Սեդադ ,
16 Եմաթ , Բերոթա , Սիբրայիմ՝ որ
Դամասկոսի սահմանին ու Եմաթի
սահմանին մէջտեղն է , ու մինչև
Աւրանի սահմանը եղող Ասեր աթ-
17 թիքոնը ։ Ու երկրին սահմանը՝
ծովէն մինչև Ասար ենան՝ որ Դա-
մասկոսի սահմանն է դէպ ՚ի հիւ-
սիս , նաև Եմաթի սահմանը պիտի
ըլլայ . և հիւսիսային կողմը ասիկայ
18 ըլլայ ։ Ու արևելեան կողմը՝ Աւ-
րանի մէջէն , ու Դամասկոսի մէ-
ջէն , և Գաղաադի մէջէն , ու Յոր-
դանանու վրայ եղող Իսրայէլի երկ-
րին մէջէն՝ սահմանէն մինչև արևե-
լեան ծովը չափեցէք . ու արևելեան
19 կողմը ասիկայ ըլլայ ։ Եւ դէպ ՚ի
հարաւ հարաւային կողմը՝ Թամա-
րէն մինչև Վիճաբանութեան ջու-
րերը՝ Կադէսի մէջ , ու մինչև մեծ
ծովը երթող հեղեղատը պիտի ըլլայ .
և դէպ ՚ի հարաւ՝ հարաւային կող-
20 մը ասիկայ ըլլայ ։ Ու արևմտեան
կողմը՝ Մեծ ծովը պիտի ըլլայ , սահ-
մանէն մինչև Եմաթի դիմացը . ա-
րևմտեան կողմը ասիկայ ըլլայ ։
21 Եւ աս երկիրը ձեզի բաժնեցէք՝
22 Իսրայէլի ցեղերուն համեմատ , Ու
զանիկայ ժառանգութեան համար

դ Թուոց . ԼԴ . 6 ։ Յես . ԺԴ . 4 ։ Գլ . ԽԸ . 28 ։
ե Հմր 7 ։
զ Սաղ . Ա . 3 ։ Երեմ . ԺԷ . 8 ։
է Յայտ . ԻԲ . 2 ։
ը Ծն . ԽԸ . 5 ։ Ա Մն . Ե . 1 ։ Գլ . ԽԸ . 4 , 5 ։
թ Ծն . ԺԲ . 7 ։ ԺԴ . 15 ։ ԺԵ . 7 ։ ԺԷ . 8 ։ ԻԶ . 3 ։ ԻԸ . 13 ։ Գլ . Ի . 5 , 6 , 28 , 42 ։
ժ Գլ . ԽԸ . 29 ։
ի Գլ . ԽԸ . 1 ։
լ Թուոց . ԼԴ . 8 ։
խ Թուոց . ԼԴ . 8 ։
ծ Բ Թագ . Ը . 8 ։
կ Թուոց . ԼԴ . 9 ։ Գլ . ԽԸ . 1 ։
հ Թուոց . Ի . 13 ։ Բ Օր . ԼԲ . 51 ։ Սաղ . ՁԱ . 7 ։ Գլ . ԽԸ . 28 ։

վիճակով բաժնեցէք՝ թէ ձեզի , և
թէ ձեր մէջը բնակող ու ձեր մէջը
զաւակներ ծնանող օտարականնե-
րուն . Ու անոնք ձեզի բնակներու
պէս պիտի ըլլան Իսրայէլի որդւո-
ցը մէջ , ու անոնք ձեզի հետ ժա-
ռանգութիւն պիտի առնեն Իսրա-
23 յէլի ցեղերուն մէջ ։ Եւ որ ցե-
ղին մէջ որ օտարականը պանդըխ-
տացած է , հոն անոր ժառանգու-
թիւնը պիտի տաք՝ կ'ըսէ Տէր Ե-
հովան ։

## ԳԼ . ԽԸ

1 , 23 Տասուերկու ցեղերուն , 8 սրբարանին , 15 քաղաքին ու արուարձաններուն , 21 ու իշխանին բաժինները ։ 30 Քաղաքին չափերը ու դռները ։

1 Եւ ցեղերուն անունները ասոնք
են ։ Հիւսիսի ծայրէն՝ Եթ-
լոնի ճամբուն քովը դէպ ՚ի Եմաթ
երթալով՝ մինչև Ասար ենան՝ որ
Դամասկոսի սահմանն է դէպ ՚ի
հիւսիս՝ մինչև Եմաթին քովը , ու
արևելեան կողմէն մինչև արևմուտք՝
2 Դանին մէկ բաժին ըլլայ . Եւ
Դանի սահմանին քովը՝ արևելեան
կողմէն մինչև արևմտեան կողմը՝
3 Ասերին մէկ բաժին ըլլայ . Ու Ասե-
րի սահմանին քովը՝ արևելեան
կողմէն մինչև արևմտեան կողմը՝
Նեփթաղիմին մէկ բաժին ըլլայ .
4 Ու Նեփթաղիմի սահմանին քովը՝
արևելեան կողմէն մինչև արևմտեան
կողմը՝ Մանասէի մէկ բաժին ըլլայ .
5 Եւ Մանասէին սահմանին քովը՝ ա-
րևելեան կողմէն մինչև արևմտեան
կողմը՝ Եփրեմին մէկ բաժին ըլլայ .
6 Ու Եփրեմի սահմանին քովը՝ արևե-
լեան կողմէն մինչև արևմտեան կող-
մը՝ Ռուբէնին մէկ բաժին ըլլայ .
7 Եւ Ռուբէնի սահմանին քովը՝ ա-
րևելեան կողմէն մինչև արևմտեան
կողմը՝ Յուդային մէկ բաժին ըլլայ ։
8 Եւ Յուդայի սահմանին քովը՝
արևելեան կողմէն մինչև արևմտեան
կողմը պիտի ըլլայ Ձեր ընծան՝ որ
պիտի նուիրէք , ու անիկայ քսան-
ուհինգ հազար եղէգ լայնութիւն ,
և միւս բաժիններուն մէկուն չափ
երկայնութիւն պիտի ունենայ , ա-
րևելեան կողմէն մինչև արևմտեան
կողմը . և սրբարանը անոր մէջտե-
9 ղը պիտի ըլլայ ։ Տէրոջը նուիրե-
լու ընծանիդ՝ քսանուհինգ հազար
երկայնութիւն , ու տասը հազար
10 լայնութիւն ունենայ ։ Եւ սուրբ
ընծան ասոնց ըլլայ՝ այսինքն քահա-
նաներուն . հիւսիսէն՝ երկայնութիւ-
նը քսանուհինգ հազար , ու արև-
մուտքէն՝ լայնութիւնը տասը հա-
զար , և արևելքէն՝ լայնութիւնը
տասը հազար , ու հարաւէն՝ եր-
կայնութիւնը քսանուհինգ հազար

Ն . ք . գ Ք . 574
ձ Տես Եփե . Գ . 6 ։ Յայտ . Է . 9 , 10 ։
ղ Տես Հռով . Ժ . 12 ։ Գաղ . Գ . 28 ։ Կող . Գ . 11 ։
ա Գլ . ԽԷ . 15 , 16 ։
բ Գլ . ԽԵ . 1—6 ։

Ն. Ք. Գ. 574

եղէք . ու Տէրոջը սրբարանը անոր
11 մէջտեղը ըլլայ ։ Այս բաժինը Սա-
դովկի որդւոցմէ սրբուած քահա-
նաներուն ըլլայ , որ անոնք իմ
պահպանութիւնս պահեցին , ու
երբոր Իսրայէլի որդիքը մոլորեցան ,
անոնք չմոլորեցան , ինչպէս որ
12 Ղևտացիները մոլորեցան ։ Ու երկ-
րին ընծայէն՝ աս ընծան անոնց
համար ամէնասուրբ պիտի ըլլայ՝
Ղևտացւոց սահմանին քովը ։
13 Եւ քահանայից սահմանին քովը
Ղևտացւոց բաժինը ըլլայ՝ քսանու-
հինգ հազար երկայնութեամբ ու
տասը հազար լայնութեամբ . բոլոր
երկայնութիւնը քսանուհինգ հա-
զար , ու լայնութիւնը տասը հա-
14 զար ըլլայ ։ Եւ անկէ պիտի չծա-
խեն , ու չփոխեն , ու երկրին երա-
խայրին ուրիշի վրայ չդարձընեն .
վասն զի անիկայ Տէրոջը նուի-
րուած է ։
15 Եւ քսանուհինգ հազարին քովը
լայնութենէն մնացած հինգ հա-
զարը անսուրբ պիտի ըլլայ՝ քա-
ղաքին համար , բնակութեան հա-
մար ու արուարձաններուն համար .
և քաղաքը անոր մէջտեղը ըլլայ .
16 Ու անոր չափերը ասոնք ըլլան .
Հիւսիսային կողմը՝ չորս հազար
հինգ հարիւր , և հարաւային կող-
մը՝ չորս հազար հինգ հարիւր , և
արևելեան կողմը՝ չորս հազար հինգ
հարիւր , ու արևմտեան կողմը՝ չորս
17 հազար հինգ հարիւր ։ Եւ քա-
ղաքին արուարձանը՝ դէպ 'ի հիւ-
սիս՝ երկու հարիւր յիսուն , ու
դէպ 'ի հարաւ՝ երկու հարիւր յի-
սուն , և դէպ 'ի արևելք՝ երկու
հարիւր յիսուն , ու դէպ 'ի արև-
մուտք՝ երկու հարիւր յիսուն ըլ-
18 լայ ։ Եւ սուրբ ընծային քովը՝
երկայնութենէն մնացած դէպ 'ի
արևելք տասը հազարը , ու դէպ 'ի
արևմուտք տասը հազարը՝ (որ
սուրբ ընծային քովն է ,) անոր
բերքը՝ քաղաքին ծառայութիւնը
19 ընողներուն կերակուր ըլլայ ։ Եւ
քաղաքին ծառայութիւնը ընող-
ները՝ Իսրայէլին ամէն ցեղերէն պի-
տի ըլլան ։
20 Բոլոր ընծան քսանուհինգ հա-
զարով քսանուհինգ հազար ըլլայ ,
ու սուրբ ընծան քաղաքին կա-
լուածքին հետ մէկտեղ՝ քառա-
կուսի մատուցանէք ։
21 Եւ սուրբ ընծային , ու քաղաքին
կալուածքին մէկ կողմէն ու մէկալ
կողմէն մնացածը՝ իշխանին համար
ըլլայ . նուիրուած քսանուհինգ հա-
զարին դիմացը մինչև արևելեան
սահմանը՝ ու դէպ 'ի արևմուտք
քսանուհինգ հազարին դիմացը մին-
չև արևմտեան սահմանը՝ ցեղերուն
բաժիններուն քովը՝ իշխանին հա-
մար ըլլայ ։ Անիկայ պիտի ըլլայ
սուրբ ընծան . ու տաճարին սըր-
բարանը անոր մէջտեղը պիտի ըլ-
22 լայ ։ Իշխանին բաժինին մէջտեղը
եղող Ղևտացւոց կալուածքէն ու
քաղաքին կալուածքէն դուրս ,
Յուդայի սահմանին , ու Բենիամի-
նի սահմանին մէջտեղը՝ իշխանին
պիտի ըլլայ ։
23 Եւ մնացած ցեղերուն՝ արևելեան
կողմէն մինչև արևմտեան կողմը՝
24 Բենիամինին մէկ բաժին ըլլայ . Ու
Բենիամինի սահմանին քովը՝ ա-
րևելեան կողմէն մինչև արևմտեան
կողմը՝ Շմաւոնին մէկ բաժին ըլլայ .
25 Եւ Շմաւոնի սահմանին քովը՝ ա-
րևելեան կողմէն մինչև արևմտեան
կողմը՝ Իսաքարին մէկ բաժին ըլլայ .
26 Ու Իսաքարի սահմանին քովը՝ ա-
րևելեան կողմէն մինչև արևմտեան
կողմը՝ Զաբուղոնին մէկ բաժին ըլ-
27 լայ . Եւ Զաբուղոնի սահմանին
քովը՝ արևելեան կողմէն մինչև ա-
րևմտեան կողմը՝ Գադին մէկ բաժին
28 ըլլայ . Ու Գադի սահմանին քովը՝
հարաւային կողմը՝ դէպ 'ի հարաւ՝
Երկրին սահմանը՝ Թամարէն մինչև
Վիճաբանութեան ջուրերը Կադէ-
սի մէջ , ու մինչև մեծ ծովը եղող
29 հեղեղատը պիտի ըլլայ ։ Աս է ան
երկիրը՝ որ Իսրայէլի ցեղերուն վի-
ճակով պիտի բաժնէք ժառանգու-
թեան համար . ու անոնց բաժին-
ները ասոնք են , կ'ըսէ Տէր Եհովան ։
30 Եւ քաղաքին ելքերը ասոնք են .
Հիւսիսային կողմէն՝ չորս հազար
31 հինգ հարիւր չափ ըլլալով , ( Ու
քաղաքին դռները՝ Իսրայէլի ցե-
ղերուն անուններուն համեմատ պի-
տի ըլլայ . ) երեք դուռ դէպ 'ի
հիւսիս . մէկ դուռ մը Ռուբէնինը ,
մէկ դուռ մը Յուդային , ու մէկ
32 դուռ մը Ղևիին . Եւ արևելեան
կողմէն չորս հազար հինգ հարիւր
չափ ըլլալով , երեք դուռ պիտի ըլ-
լայ . մէկ դուռ մը Յովսէփին , մէկ
դուռ մը Բենիամինին . ու մէկ դուռ
33 մը Դանին . Եւ հարաւային կողմէն՝
չորս հազար հինգ հարիւր չափ ըլ-
լալով , երեք դուռ պիտի ըլլայ . մէկ
դուռ մը Շմաւոնին , մէկ դուռ մը
Իսաքարին , ու մէկ դուռ մը Զա-
34 բուղոնին . Արևմտեան կողմէն ալ
չորս հազար հինգ հարիւր չափ ըլ-
լալով , երեք դուռ պիտի ըլլայ . մէկ
դուռ մը Գադին , մէկ դուռ մը
Ասերին , ու մէկ դուռ մը Նեփթա-
35 ղիմին ։ Բոլոր շրջապատը տասնու-
ութը հազար չափ պիտի ըլլայ . ու
ան օրէն քաղաքին անունը՝ Ե-
հովաշամա պիտի ըլլայ ։

Ն. Ք. Գ. 574

Դւ. խդ. 15 ։ Դւ. խդ. 10 ։ Ել. իբ. 29 ։ Ղև. իէ. 10. 28. 33 ։ Դւ. խե. 6 ։ Դւ. խբ. 20 ։ Դւ. խե. 6 ։ Դւ. խե. 7 ։

Հմր. 3. 10 ։ Դւ. խէ. 19 ։ Դւ. խէ. 14. 21. 22 ։ Յայտ. իա. 12. [illegible] ։ Երեմ. լգ. 16 ։ Տե՛ս Եզ. Ժէ. 15 ։ Դատ. զ. 24 ։ Տէրը հոն է. Եբր. Է. 17 ։ Յովէլ. գ. 21 ։ Զաք. բ. 10 ։ Յայտ. իա. 3 ։ իբ. 3 ։

# ՄԱՐԳԱՐԷՈՒԹԻՒՆ ԴԱՆԻԷԼԻ

Ն. Ք. ԶՔ. իբր 607

## ԳԼՈՒԽ Ա

1 Յովակիմին գերութիւնը ։ 3 Ասփանէզ ներքինին կ'առնէ Դանիէլը, Անանիան, Միսայէլը ու Ազարիան ։ 8 Անոնք թագաւորին խրկուած կերակուրը մերժելով՝ ընդեղէնով ու ջրով քաջառողջ և զուարթադէմ կ'ըլլան ։ 17 Անոնց գերազանց իմաստութիւնը ։

1 Յուդայի թագաւորին՝ Յովակիմին
թագաւորութեանը երրորդ տա-
րին՝ [ա]Բաբելոնի Նաբուգոդոնոսոր
թագաւորը Երուսաղէմ եկաւ, ու
2 զանիկայ պաշարեց ։ Եւ Տէրը ա-
նոր ձեռքը տուաւ Յուդայի Յո-
վակիմ թագաւորը, ու Աստուծոյ
տանը [բ]անօթներուն մէկ մասը. և
անիկայ զանոնք [գ]Սենաար երկիրը՝
իր աստուծոյն տունը տարաւ, [դ]ու
անօթները իր աստուծոյն գանձա-
տունը դրաւ ։
3 Եւ թագաւորը իր ներքինապե-
տին Ասփանեզին ըսաւ որ՝ [ե]Իսրա-
յէլի որդիներէն, ու թագաւորա-
կան սերունդէն, և իշխաններէն՝
4 բնաւ արատ չունեցող, գեղե-
ցիկ դէմքով, ու ամէն իմաստու-
թեան հմուտ, ու գիտութեան
տեղեակ՝ հանճարեղ, և թագա-
ւորին պալատին մէջ կայնելու
կարողութիւն ունեցող տղաքներ
բերէ, և [զ]անոնց՝ Քաղդէացւոց
5 գիրը ու լեզուն սորվեցընէ ։ Ու
թագաւորը անոնց օրական ռոճիկ
սահմանեց՝ թագաւորին ազնիւ կե-
րակուրէն, ու իր խմած գինիէն,
որ զանոնք իրեք տարի [illegible]
սնուցանէ, ու ետքը [է]թագաւորին
6 առջևը կայնին ։ Եւ անոնց մէջն
էին Յուդայի որդիներէն՝ Դանիէլը,
Անանիան, Միսայէլը ու Ազա-
7 րիան ։ [ը]Ու ներքինապետը անոնց
անուններ դրաւ. [թ]Դանիէլին՝ Բաղ-
տասասար, Անանիային՝ Սեդրաք,
Միսայէլին՝ Միսաք, ու Ազարիա-
յին՝ Աբեդնագով անուններ դրաւ ։
8 Եւ Դանիէլ միտքը դրաւ որ՝
[ժ]թագաւորին ազնիւ կերակուրովը,
ու անոր խմած գինիովը չպղծուի.
և ներքինապետէն թոյլտուութիւն
խնդրեց, որ անոնցմով ինքզինքը
9 չպղծէ ։ Ու [ի]Աստուած՝ ներքինա-
պետին առջևը շնորհք ու ողորմու-
թիւն գտնել տուաւ Դանիէլին ։
10 Եւ ներքինապետը Դանիէլին ը-
սաւ. Ես կը վախնամ իմ թագա-
ւոր տիրոջմէս որ ձեր ուտելիքը ու
խմելիքը սահմանեց. վասն զի ին-
չու համար անիկայ ձեր երեսները՝
ձեզի հասակակից եղող տղոցը երե-
սներէն աւրած տեսնէ, ու զիս թա-
գաւորին առջևը գլխապարտ ընէք ։
11 Եւ Դանիէլ ըսաւ *տնտեսին՝ որն
որ ներքինապետը Դանիէլին, Անա-
նիային, Միսայէլին ու Ազարիային
12 վրայ դրեր էր. Շնորհք ըրէ, քու
ծառաներդ տասը օր փորձէ, ու
մեզի՝ ուտելու համար՝ ընդեղէն, ու
13 խմելու համար՝ ջուր տրուի. Եւ
քու առջևդ մեր դէմքը, ու թա-
գաւորին ազնիւ կերակուրը ուտող
տղոցը դէմքը երևնան, և ինչպէս
որ տեսնես, անոր համեմատ ըրէ
14 քու ծառաներուդ ։ Ու անիկայ՝
աս բանիս համար անոնց մտիկ ը-
րաւ, ու զանոնք տասը օր փորձեց ։
15 Եւ տասը օրէն ետքը անոնց դէմքը՝
թագաւորին ազնիւ կերակուրը ու-
տող ամէն տղոցը դէմքէն աւելի
16 աղէկ ու գէր երևցաւ ։ Ուստի
տնտեսը անոնց ազնիւ կերակուրը,
ու խմելու գինին կը վերցընէր, ու
անոնց ընդեղէն կու տար ։
17 Եւ [լ]Աստուած աս չորս տղոցը՝
ամէն դպրութեան ու իմաստու-
թեան մէջ [խ]գիտութիւն ու հան-
ճար տուաւ. ու Դանիէլ [ծ]ամէն
տեսիլքը ու երազը կը հասկընար ։
18 Եւ այն օրերը լմննալէն ետքը՝ որ
թագաւորը հրաման ըրեր էր որ
զանոնք բերեն, ներքինապետը զա-
նոնք Նաբուգոդոնոսորին առջևը
19 տարաւ ։ Ու թագաւորը անոնց
հետ խօսեցաւ, և անոնց ամենուն
մէջը՝ Դանիէլին, Անանիային, Մի-
սայէլին ու Ազարիային պէս չգըտ-
նուեցաւ. ու [կ]անոնք թագաւորին
20 առջևը կը կայնէին ։ Եւ թագա-
ւորը անոնց հարցուցած [հ]ամէն ի-
մաստութեան ու գիտութեան վե-
րաբերեալ բաներուն մէջը՝ զանոնք
իր բոլոր թագաւորութեանը մէջ
եղող բոլոր մոգերէն ու հմայող-
ներէն՝ տասնապատիկ գերազանց
21 գտաւ ։ [ձ]Եւ Դանիէլ մինչև Կիւ-
րոսի առաջին տարին մնաց ։

ա Դ Թագ. իդ. 1 ; բ Մն. լզ. 6 ։
իբր 606
բ Երեմ. իէ. 19, 20 ։
գ Ծն. ժ. 10 ; ժա. 2 ; Եսա. ժա. 11 ; Զաք. ե. 11 ։
դ բ Մն. լզ. 7 ։
ե Տես Դ Թագ. ի. 17, 18 ; Եսա. լթ. 7 ։
զ Տես Գործ. է. 22 ։
է Հմր 19 ; Ծն. խա. 46 ; Գ Թագ. ժ. 8 ։
ը Տես Ծն. խա. 45 ; Դ Թագ. իդ. 17 ։
թ Դն. դ. 8 ; ե. 12 ։
ժ Տես բ Օր. լբ. 38 ; Եզեկ. դ. 13 ; Ովս. թ. 3 ։
ի Տես Ծն. լթ. 21 ; Սաղ. ճզ. 46 ; Առակ. ժզ. 7 ։

Ն. Ք. ԶՔ. իբր 606
* Կամ՝ Մելսարին՝
լ Գ Թագ. գ. 12 ; Յակ. ա. 5, 17 ։
խ Տես Գործ. է. 22 ։
ծ Թուոց. ժբ. 6 ; բ Մն. իզ. 5 ; Դն. ե. 11, 12, 14 ; ժ. 1 ։
603
կ Ծն. խա. 46 ; Հմր 5 ։
հ Գ Թագ. ժ. 1 ։
ձ Դն. զ. 28 ; Տես գլ. ժ. 1 ։

Ն․Ք․ԶՃ․ 603

## ԳԼ․ Բ

1 Նաբուգոդոնոսոր իր տեսած երազը մոռնալով՝ խոստմունքներով ու սպառնալիքներով կը պահանջէ Քաղդեաններէն՝ որ զանիկայ իրեն պատմեն․ 10 որոնք իրենց անյաջողակութիւնը խոստովանելով՝ մեռնելու կը դատապարտուին ։ 14 Դանիէլ քիչ մը պայմանաժամ ձեռք բերելով՝ երազը կը գտնէ․ 19 զԱստուած կ'օրհնէ․ 24 Թագաւորին առջեւը կը տարուի ։ 31 Երազը ։ 36 ու անոր մեկնութիւնը ։ 46 Դանիէլին յառաջանալը ։

1 Ու Նաբուգոդոնոսորին թագաւո-
րութեանը երկրորդ տարին՝
Նաբուգոդոնոսոր երազներ տեսաւ․
[ա]և անոր ոգին խռովեցաւ, ու
2 [բ]քունը փախաւ ։ [գ]Եւ թագաւորը
հրամայեց որ մոգերը, հմայողները,
կախարդները ու Քաղդեանները կան-
չեն, որպէս զի թագաւորին՝ իր
երազները պատմեն․ և անոնք ե-
կան, ու թագաւորին առջեւը կայ-
նեցան ։
3 Եւ թագաւորը անոնց ըսաւ․ Ե-
րազ տեսայ․ ու իմ ոգիս կը խռովի
4 որ այն երազը գիտնամ ։ Ու Քաղ-
դեանները թագաւորին *Ասորերէն
ըսին․ [դ]Ո՛վ թագաւոր՝ յաւիտեան
ողջ կեցիր․ ըսէ՛ երազը քու ծա-
ռաներուդ, ու մենք անոր մեկնու-
5 թիւնը իմացնենք ։ Թագաւորը
պատասխան տուաւ, ու Քաղդեա-
ներուն ըսաւ․ †Բանը ինծմէ ելաւ․
թէ որ երազը, ու անոր մեկնու-
թիւնը ինծի չյայտնէք, դուք
[ե]կտոր կտոր պիտի ըլլաք, ու ձեր
տուները աղբանոց պիտի ըլլան ։
6 [զ]Բայց թէ որ երազը, ու անոր մեկ-
նութիւնը ինծի իմացնէք, ինծմէ
պարգեւներ, [է]տուրքեր ու շատ
պատիւներ պիտի առնէք․ ուրեմն
երազը, ու անոր մեկնութիւնը ին-
7 ծի իմացուցէ՛ք ։ Անոնք նորէն
պատասխան տուին, ու ըսին․
Թագաւորը թող ըսէ՛ երազը իր
ծառաներուն, ու անոր մեկնու-
8 թիւնը իմացնենք ։ Թագաւորը
պատասխան տուաւ, ու ըսաւ․
Աղէկ գիտեմ որ դուք [ը]ժամանակը
ձախու կ'առնէք․ վասն զի կը
տեսնէք որ ‡բանը ինծմէ ելած է ։
9 Բայց թէ որ դուք երազը ինծի
չյայտնէք, [թ]ձեզի համար մէկ
վճիռ կայ․ վասն զի դուք մէջեր-
նիդ որոշեցիք՝ որ իմ առջեւս սուտ
ու խաբէական խօսք մը զրուցէք՝
մինչև որ ժամանակը փոխուի․
ուստի ըսէ՛ք ինծի երազը, որ
գիտնամ թէ պիտի կարենաք ա-
նոր մեկնութիւնը իմացնել ։
10 Քաղդեանները թագաւորին առ-
ջեւը պատասխան տուին ու ըսին․
Երկրի վրայ անանկ մարդ մը չկայ,
որ կարող ըլլայ թագաւորին պա-
հանջած բանը իմացնելու․ անոր
համար բնաւ մէկ թագաւոր մը,
նախարար մը, կամ իշխան մը
ասանկ բան պահանջած չէ մէկ
մոգէ մը, կամ հմայողէ մը, կամ
11 Քաղդեայէ մը․ Ու թագաւորին
պահանջած բանը դժուար է․ և
ուրիշ մէկը չկայ որ զանիկայ
թագաւորին առջեւը իմացնէ,
[ժ]բայց եթէ աստուածները՝ որ
մսեղեաց մէջ չեն բնակիր ։
12 Ասոր վրայ թագաւորը սրդողե-
ցաւ ու խիստ բարկացաւ, և հրա-
մայեց որ Բաբելոնի բոլոր իմաս-
13 տունները կոտրեն ։ Ու հրամա-
նը ելաւ, և իմաստունները կը
կոտրուէին․ ու փնտռեցին Դա-
նիէլը ու անոր ընկերները որ մեռ-
14 ցնեն ։ Այն ատենը Դանիէլ
իմաստութեամբ ու խոհեմու-
թեամբ խօսեցաւ թագաւորին
[ի]դահճապետին Արիովքին հետ՝ որ
Բաբելոնի իմաստունները կոտրե-
15 լու ելեր էր․ Ու թագաւորին
իշխանին Արիովքին խօսեցաւ, ու
ըսաւ․ Ինչո՞ւ համար այս հրամա-
նը թագաւորին երեսէն արտոր-
նօք ելաւ․ այն ատենը Արիովք
16 բանը Դանիէլին յայտնեց ։ Եւ
Դանիէլ մտաւ, ու թագաւորէն
խնդրեց, որ իրեն ժամանակ տայ,
որ մեկնութիւնը թագաւորին ի-
17 մացնէ ։ Ու Դանիէլ իր տունը
գնաց, և այս բանը իր ընկերնե-
րուն՝ Անանիային, Միսայէլին ու
18 Ազարիային յայտնեց, [լ]Որ աս
գաղտնիքին համար՝ երկնից Աս-
տուծմէն գթութիւն խնդրեն,
որպէս զի Դանիէլը ու անոր ըն-
կերները՝ Բաբելոնի մնացած իմաս-
տուններուն հետ չկորսնցնեն ։
19 Եւ գաղտնիքը [խ]գիշերուան տե-
սիլքի մէջ՝ Դանիէլին յայտնուե-
ցաւ․ այն ատենը Դանիէլ երկնից
20 Աստուածը օրհնեց ։ Դանիէլ խօ-
սեցաւ, ու ըսաւ․ [ծ]Աստուծոյ
անունը յաւիտեանս յաւիտենից
օրհնեալ ըլլայ․ [կ]վասն զի իմաս-
տութիւնը ու զօրութիւնը անորն
21 է․ Եւ [հ]ատենները ու ժամա-
նակները փոխողը, [ձ]թագաւոր-
ներ վերցնողը, ու թագաւորներ
դնողը անիկայ է․ [ղ]Անիկայ ի-
մաստուններուն իմաստութիւն կու
տայ, ու հանճարեղներուն՝ գիտու-
22 թիւն․ [ճ]Խորունկ ու ծածկուած
բաները ինքը կը յայտնէ, [մ]մութի
մէջ եղածը գիտէ, ու [յ]լոյսը անոր
23 քովը կը բնակի ։ Ես քեզի գո-
հութիւն ու փառք կը մատուցա-
նեմ՝ ով իմ հայրերուս Աստուա-
ծը, որ ինծի իմաստութիւն ու
զօրութիւն տուիր․ ու հիմա ինծի
գիտցուցիր ինչ որ քեզմէ [ն]խնդրե-

ա Ծն․ խա․ 8 ։ Գլ․ դ․ 5 ։
բ Եսթ․ զ․ 1 ։ Գլ․ զ․ 18 ։
գ Ծն․ խա․ 8 ։ Ել․ է․ 11 ։ Գլ․ ե․ 7 ։
* Կամ՝ Քաղդէարէն
դ Գ Թագ․ ա․ 31 ։ Գլ․ գ․ 9 ։ ե․ 10 ։ զ․ 6, 21 ։
† Կամ՝ Հրամանը
ե Դ Թագ․ ժ․ 27 ։ Եզր․ զ․ 11 ։ Գլ․ գ․ 29 ։
զ Գլ․ ե․ 16 ։
է Գլ․ ե․ 17 ։ Հմր 48 ։
ը Եփե․ ե․ 16 ։
‡ Կամ՝ Հրամանը
թ Եսթ․ դ․ 11 ։

Ն․Ք․ԶՃ․ 603

ժ Հմր 28 ։ Գլ․ ե․ 11 ։
ի Ծն․ լե․ 36 ։
լ Մատ․ ժը․ 19 ։
խ Թուոց․ ժբ․ 6 ։ Յոբ․ լդ․ 15, 16 ։
ծ Սաղ․ ճժգ․ 2 ։ ճժե․ 18 ։
կ Երեմ․ լբ․ 19 ։
հ Գլ․ է․ 25 ։
ձ Յոբ․ ժբ․ 18 ։ Սաղ․ կե․ 6, 7 ։ Երեմ․ իէ․ 5 ։ Գլ․ դ․ 17 ։
ղ Յակ․ ա․ 5 ։
ճ Յոբ․ ժբ․ 22 ։ Սաղ․ իե․ 14 ։ Հմր 28, 29 ։
մ Սաղ․ ճլթ․ 11, 12 ։ Եբր․ դ․ 13 ։
յ Գլ․ ե․ 11, 14 ։ Յակ․ ա․ 17 ։
ն Հմր 18 ։

Ն. Ք. Գ. Ճ. 603

ցինք . քանզի Թագաւորին բանը
մեզի գիտցուցիր ։
24 Ուստի Դանիէլ՝ Արիովքին առ-
ջևը ելաւ , որն որ Թագաւորը գը-
րեր էր Բաբելոնի իմաստունները
կորսընցընելու . գնաց ու անոր այս-
պէս ըսաւ . Բաբելոնի իմաստուն-
ները մի՛ կորսընցըներ . զիս Թա-
գաւորին առջև՛ը տար , ու մեկնու-
թիւնը Թագաւորին իմացընեմ ։
25 Ան ատենը Արիովք արտորնօք Դա-
նիէլը Թագաւորին առջևը հանեց ,
ու անոր այսպէս ըսաւ . Հրէաս-
տանի գերիներէն մարդ մը գտայ ,
որ մեկնութիւնը պիտի գիտցընէ
26 Թագաւորին ։ Պատասխան տուաւ
Թագաւորը ու ըսաւ Դանիէլին ,
որուն անունը Բաղտասասար դը-
րուած էր , Կարո՞ղ ես դուն իմ
տեսած երազս , ու անոր մեկնու-
թիւնը ինծի գիտցընելու ։
27 Դանիէլը Թագաւորին առջևը
պատասխան տուաւ ու ըսաւ .
Թագաւորին հարցուցած գաղտնի-
քը՝ իմաստունները , հմայողները ,
մոգերը ու բաղդ նայողները՝ Թա-
գաւորին յայտնելու կարող չեն .
28 Բայց երկինքի մէջ գաղտնիքները
յայտնող Աստուած կայ , ու Նա-
բուգոդոնոսոր Թագաւորին կը
յայտնէ ինչ որ ետքի օրերը պիտի
ըլլայ ։ Երազդ , ու անկողնիդ
մէջ գլխուդ տեսիլքը՝ ասիկայ է .
29 Դուն ո՛վ Թագաւոր՝ քու անկողի-
նիդ մէջը կը մտածէիր թէ ասկէ
ետքը ինչ պիտի ըլլայ . ու գաղտ-
նիքները յայտնողը՝ ըլլալու բանը
30 քեզի գիտցուց ։ Ու աս գաղտ-
նիքը՝ չէ թէ ամէն ապրողներէն
աւելի իմաստութիւն ունենալուս
համար ինծի յայտնուեցաւ , հապա
մեկնութիւնը Թագաւորին գիտցը-
նելու համար , և որ դուն քու
սրտիդ խորհուրդները գիտնաս ։
31 Դուն՝ ո՛վ Թագաւոր՝ կը տեսնէիր
որ ահա մէկ մեծ արձան մը կար .
աս մեծ ու խիստ պայծառ արձանը
քու դիմացդ կայներ էր , և անոր
32 երևոյթը ահաւոր էր ։ Աս ար-
ձանին գլուխը զուտ ոսկիէ , անոր
կուրծքը ու թևերը՝ արծաթէ ,
33 մէջքը ու ազդրերը՝ պղնձէ , Սրունք-
ները՝ երկաթէ , ու ոտքերուն մէկ
մասը՝ երկաթէ , ու մէկ մասը՝ կաւէ
34 էր ։ Դուն կը տեսնէիր , մինչև որ
մէկ քար մը կտրուեցաւ առանց
ձեռքի , ու ան արձանին երկաթէ
ու կաւէ ոտքերուն զարկաւ , ու
35 զանոնք փշրեց ։ Ան ատենը եր-
կաթը , կաւը , պղինձը , արծաթը
ու ոսկին մէկտեղ փշրուեցան , և
ամառուան կալերուն մղեղին պէս
եղան . ու հովը զանոնք տարաւ ,
ու ամենևին անոնց տեղ մը չը-
գտնուեցաւ . բայց արձանը զար-
նող քարը՝ մեծ լեռ մը եղաւ , ու
36 բոլոր երկիրը լեցուց ։ Երազը աս
է . ու Թագաւորին առջևը անոր
մեկնութիւնը ըսենք ։
37 Ո՛վ Թագաւոր՝ դուն Թագա-
ւորաց Թագաւոր ես . վասն զի
երկնից Աստուածը քեզի՝ Թագա-
ւորութիւն , կարողութիւն , զօ-
38 րութիւն ու պատիւ տուեր է . Ու
մարդոց որդիներուն բոլոր բնակած
տեղերուն մէջ՝ դաշտի գազանները ,
ու երկինքի թռչունները քու ձեռ-
քըդ տուեր է , և անոնց ամենուն
վրայ քեզ իշխան դրեր է . ան ոսկի
39 գլուխը դուն ես ։ Ու քեզմէ ետքը՝
մէկ ուրիշ Թագաւորութիւն մը
պիտի ելլէ քեզմէ ցած , ու պղնձէ
մէկ ուրիշ երրորդ Թագաւորու-
թիւն մը՝ որ բոլոր երկրին պիտի
40 տիրէ ։ Ու չորրորդ Թագաւորու-
թիւնը երկաթի պէս ամուր պիտի
ըլլայ . ու ինչպէս որ երկաթը ա-
մէն բանը կը փշրէ ու կը մանրէ ,
ասիկայ ալ՝ աս ամէն բաները կոտ-
րող երկաթին պէս՝ փշրելով պի-
41 տի կոտրէ ։ Ու որովհետև ոտքերը
ու մատները՝ մէկ մասը բրուտի կա-
ւէ , ու մէկ մասը երկաթէ տեսար ,
ան Թագաւորութիւնը պիտի բաժ-
նուի , բայց երկաթի պնդութենէ
բաժին պիտի ունենայ . քանզի եր-
կաթը տղմուտ կաւի հետ խառնած
42 տեսար ։ Ու ոտքերուն մատները՝
մէկ մասը երկաթէ ու մէկ մասը
կաւէ ըլլալը է որ՝ ան Թագա-
ւորութեանը մէկ մասը ամուր , ու
մէկ մասը դիւրաբեկ պիտի ըլլայ ։
43 Ու տղմուտ կաւին հետ երկաթը
խառնած տեսնելդ է որ՝ անոնք
մարդոց սերունդին հետ պիտի
խառնուին . բայց անոնք իրարու
պիտի չփակչին , ինչպէս որ երկա-
թը կաւին հետ չխառնուիր ։
44 Ու ան Թագաւորներուն օրերը՝
երկնից Աստուածը մէկ Թագաւո-
րութիւն մը պիտի հանէ , որ անի-
կայ յաւիտեան պիտի չաւրի . և աս
Թագաւորութիւնը ուրիշ ժողո-
վուրդի պիտի չթողուի . Հանիկայ
աս բոլոր Թագաւորութիւնները
պիտի փշրէ ու պիտի հատցընէ , ու
45 ինքը յաւիտեան պիտի մնայ ։ Ո-
րովհետև դուն՝ առանց ձեռքի՝ լեռ-
նէն կտրած քար մը տեսար , և ա-
նիկայ՝ երկաթը , պղինձը , կաւը ,
արծաթը ու ոսկին փշրեց , մեծ
Աստուածը՝ ասկէ ետքը ինչ ըլ-
լալիքը Թագաւորին գիտցուց . ու
երազը ճշմարիտ է , և անոր մեկ-
նութիւնը հաւատարիմ ։
46 Ան ատենը Նաբուգոդոնոսոր

Ծն. խ. 8 ։ խա. 16 ։ Հմր 18, 47 ։ Ամով. դ. 13 ։ Ծն. խթ. 1 ։
Հմր 22, 28 ։
Տես Ծն. խա. 16 ։ Գործ. գ. 12 ։
Հմր 47 ։
Տես Հմր 38, ...
Հմր 45 ։ Գղ. ը. 25 ։ Զաք. դ. 6 ։ Բ Կոր. ե. 1 ։ Եբր. թ. 24 ։
Սաղ. ա. 4 ։ Ովս. ժգ. 3 ։

Ն. Ք. Գ. Ճ. 603
Սաղ. լէ. 10, 36 ։
Ես. բ. 2, 3 ։
Սաղ. ձ. 9 ։
Եզր. է. 12 ։ Տես Ես. խէ. 5 ։ Երեմ. իէ. 6, 7 ։ Եզեկ. իզ. 7 ։ Ովս. ը. 10 ։
Եզր. ա. 2 ։
Գղ. դ. 21, 22 ։ Երեմ. իէ. 6 ։
Հմր 32 ։
Գղ. ե. 28, 31 ։
Հմր 32 ։
Գղ. է. 7, 23 ։
Հմր 33 ։
Հմր 28 ։
Գղ. դ. 3, 34 ։ գ. 26 ։ է. 14, 27 ։ Միք. դ. 7 ։ Ղուկ. ա. 32, 33 ։
Սաղ. բ. 9 ։ Ես. կ. 12 ։ Ա Կոր. ժե. 24 ։
Հմր 34 ։ Ես. իը. 16 ։
Տես Գործ. ժ. 25 ։ ժդ. 12 ։ իը. 6 ։

Ն. Ք. ԳՖ. 603

ա Եզր. զ. 10:

թագաւորը իր երեսին վրայ ինկաւ,
ու Դանիէլին երկրպագութիւն ը-
րաւ, և հրամայեց որ ընծայ՝ ա ու ա-
նուշ հոտեր մատուցանեն անոր ։
47 Եւ թագաւորը Դանիէլին պա-
տասխան տուաւ, ու ըսաւ. Ի-
րաւցընէ ձեր Աստուածը՝ ինքն է
աստուածներուն Աստուածը, և
թագաւորաց Տէրը, բ ու գաղտ-
նիքները յայտնողը. քանզի դուն
կարող եղար աս գաղտնիքը յայտ-
48 նելու ։ Ան ատենը թագաւորը
մեծցուց Դանիէլը, գ ու անոր շատ
դ մեծ պարգևներ տուաւ, և զա-
նիկայ Բաբելոնի բոլոր գաւառին
վրայ կառավարիչ, ու Բաբելոնի
ե բոլոր իմաստնոց գլխաւորներուն
49 վրայ իշխան դրաւ ։ Եւ Դանիէլը
թագաւորէն խնդրեց, զ ու Բաբե-
լոնի գաւառին գործոցը վրայ՝ Սեդ-
րաքը, Միսաքը ու Աբեդնագովը
դրաւ. ու Դանիէլը է թագաւորին
դուռն էր ։

բ Հմր 28:

գ Հմր 6:

դ Գլ. դ. 9: ե. 11:

ե Գլ. դ. 12:

զ Եսթ. բ. 19, 21: գ. 2:

## ԳԼ. Գ

1 Նաբուգոդոնոսոր Դուրայի մէջ ոսկիէ արձան մը կանգնելով՝ անոր նաւակատիքը կ'ընէ ։ 8 Սեդրաքին, Միսաքին ու Աբեդնագովին վրայով ամբաստանութիւն կ'ըլլայ թագաւորին, ըսելով թէ՝ արձանին երկրպագութիւն չեն ըներ ։ 13 Երբոր անոնց սպառնալիքներ կ'ըլլայ, անոնք համարձակութեամբ կը դաւանին ճշմարտութիւնը ։ 19 Աստուած կը փրկէ զանոնք հնոցին մէջէն ։ 26 Նաբուգոդոնոսոր եղած հրաշքը տեսնելով՝ զԱստուած կ'օրհնէ ։

Իբր 580

1 Նաբուգոդոնոսոր թագաւորը մէկ
ոսկիէ արձան մը շինեց, անոր
բարձրութիւնը վաթսուն կան-
գուն, ա ու լայնութիւնը վեց կան-
գուն. զանիկայ Բաբիլոնի գաւառը՝
2 Դուրա դաշտին մէջ կանգնեց ։ Եւ
Նաբուգոդոնոսոր թագաւորը հրա-
ման խրկեց՝ կուսակալները, նախա-
րարները, կառավարիչները, դա-
տաւորները, գանձապետները,
խորհրդականները, օրէնսգէտները,
ու գաւառներուն բոլոր իշխանները
ժողվելու, որ Նաբուգոդոնոսոր
թագաւորին կանգնած արձանին
3 նաւակատիքին գան ։ Ան ատենը
կուսակալները, նախարարները,
կառավարիչները, դատաւորները,
գանձապետները, խորհրդականնե-
րը, օրէնսգէտները, ու գաւառ-
ներուն բոլոր իշխանները Նաբու-
գոդոնոսոր թագաւորին կանգնած
արձանին նաւակատիքին ժողվուե-
ցան, ու Նաբուգոդոնոսորին
կանգնած արձանին առջևը կայնե-
ցան ։
4 Եւ մունետիկը ուժով կը կան-
չէր. բ Ո՛վ ժողովուրդներ, ազգեր
ու լեզուներ՝ ձեզի կը զրուցուի.
5 Երբոր փողին, սրինգին, քնարին,
ջութակին, տաւիղին, տիկին, ու

բ Գլ. դ. 1: զ. 25:

ամէն տեսակ նուագարաններուն
ձայնը լսէք, Նաբուգոդոնոսոր
թագաւորին կանգնած ոսկի
արձանին առջևը իյնաք, ու երկրպա-
6 գութիւն ընէք. Եւ ով որ չիյ-
նայ, ու երկրպագութիւն չընէ,
նոյն ժամուն՝ գ բորբոքած կրակի
7 հնոցին մէջը պիտի նետուի ։ Ուս-
տի երբոր բոլոր ժողովուրդները՝
փողին, սրինգին, քնարին, ջու-
թակին, տաւիղին, ու ամէն տե-
սակ նուագարաններուն ձայնը լսե-
ցին, բոլոր ժողովուրդները, ազգե-
րը ու լեզուները կ'իյնային, և Նա-
բուգոդոնոսոր թագաւորին կանգ-
նած ոսկի արձանին երկրպագու-
թիւն կ'ընէին ։
8 Ուստի ան ատենը քանի մը
Քաղդէացի մարդիկ դ մօտեցան,
ու Հրէաներուն վրայով ամբաս-
9 տանութիւն ըրին. Նաբուգոդոնո-
սոր թագաւորին խօսեցան, ու ը-
սին. ե Ո՛վ թագաւոր՝ յաւիտեան
10 ողջ կեցիր. Դուն՝ ով թագաւոր՝
հրաման ըրիր որ ամէն մարդ որ փո-
ղին, սրինգին, քնարին, ջութա-
կին, տաւիղին, տիկին, և ամէն
տեսակ նուագարաններուն ձայնը
լսէ, իյնայ ու ոսկի արձանին
11 երկրպագութիւն ընէ. Եւ ով որ
չիյնայ ու երկրպագութիւն չընէ,
բորբոքած կրակի հնոցին մէջը նե-
12 տուի ։ զ Քանի մը Հրէայ մար-
դիկ կան, որոնք դուն Բաբիլո-
նի գաւառին գործոցը վրայ դը-
րիր, այսինքն Սեդրաք, Միսաք
և Աբեդնագով. աս մարդիկը
քեզ բանի տեղ չեն սեպեր՝ ով
թագաւոր. քու աստուածներդ
չեն պաշտեր, և քու կանգնած ոսկի
արձանիդ երկրպագութիւն չեն ը-
ներ ։
13 Ան ատենը Նաբուգոդոնոսոր
սրտմտութեամբ և բարկութեամբ
հրամայեց, որ Սեդրաքը, Միսա-
քը ու Աբեդնագովը բերեն. ուստի
ան մարդիկը թագաւորին առջևը
14 բերին ։ Պատասխան տուաւ Նա-
բուգոդոնոսոր, ու անոնց ըսաւ.
Ո՛վ Սեդրաք, Միսաք ու Աբեդ-
նագով՝ իրաւ է որ իմ աստուած-
ներս չէք պաշտեր, և իմ կանգնած
ոսկի արձանիս երկրպագութիւն
15 չէք ըներ ։ Հիմա թէ որ պատ-
րաստ էք, փողին, սրինգին, քնա-
րին, ջութակին, տաւիղին, տի-
կին, ու ամէն տեսակ նուագարան-
ներուն ձայնը լսած ատեննիդ՝ իյ-
նալու ու իմ շինած արձանիս եր-
կրպագութիւն ընելու, աղէկ.
բայց թէ որ երկրպագութիւն չը-
նէք, նոյն ժամուն՝ բորբոքած կրա-
կի հնոցին մէջը պիտի նետուիք.

Ն. Ք. ԳՖ. Իբր 603

գ Տես Երեմ. իթ. 22: Յայտ. ժդ. 15:

դ Գլ. զ. 12:

ե Գլ. բ. 4: ե. 10: զ. 6, 21:

զ Գլ. բ. 49:

Ն. Ք. ՉԲ.
Իբր 580

ղ Ել. ե. 2 ։ դ Թագ. ժը. 35 ։

է Տե՛ս Մատ. ժ. 33 ։

ու ո՞վ է այն Աստուածը, որ ձեզ
իմ ձեռքէս պիտի ազատէ ։
16 Պատասխան տուին Սեդրաք,
Միսաք ու Աբեդնագով, ու Թա-
գաւորին ըսին. Ո՛վ Նաբուգո-
դոնոսոր՝ է այս բանիս վրայով քեզի
պատասխան տալու հարկաւորու-
17 թիւն մը չունինք ։ Ահա մեր պաշ-
տած Աստուածը՝ մեզ բորբոքած
կրակի հնոցէն ազատելու կարող է.
քու ձեռքէդ ալ մեզ պիտի ազա-
18 տէ, ո՛վ Թագաւոր ։ Ապա թէ
ոչ՝ քեզի յայտնի ըլլայ՝ ո՛վ Թա-
գաւոր, որ մենք քու աստուածներդ
չենք պաշտեր, և քու կանգնած
ոսկի արձանիդ երկրպագութիւն
չենք ըներ ։
19 Այն ատենը Նաբուգոդոնոսոր
բարկութեամբ լեցուեցաւ, ու ա-
նոր երեսին երևոյթը փոխուեցաւ՝
Սեդրաքին, Միսաքին ու Աբեդ-
նագովին վրայ, և պատասխան տա-
լով՝ հրամայեց որ հնոցը՝ վառելու
սովորութենէն եօթնպատիկ աւելի
20 վառեն. Ու իր զօրքին մէջը եղող
զօրաւոր մարդոցը հրամայեց՝ որ
Սեդրաքը, Միսաքը ու Աբեդնա-
գովը կապեն, ու բորբոքած կրակի
21 հնոցին մէջը նետեն ։ Այն ատենը այս
մարդիկը՝ իրենց անդրավարտիքնե-
րովը, բաճկոններովը, վերարկու-
ներովը, ու միւս հանդերձներովը
կապեցին, ու բորբոքած կրակի հը-
22 նոցին մէջը նետեցին ։ Եւ Թագա-
ւորին հրամանը ստիպողական ըլլա-
լուն, ու հնոցը շատ տաքցած ըլլա-
լուն համար, Սեդրաքը, Միսաքը
ու Աբեդնագովը վերցընող մար-
դիկները՝ կրակին բոցը սպաննեց ։
23 Եւ այս իրեք մարդիկը՝ Սեդրաք,
Միսաք ու Աբեդնագով՝ կապուած
ինկան բորբոքած կրակի հնոցին մէ-
ջը ։
24 Այն ատենը Նաբուգոդոնոսոր
Թագաւորը ապշած՝ արտորնօք ոտք
ելաւ, իր խորհրդականներուն խօ-
սեցաւ, ու ըսաւ. Մենք կրակին
մէջը իրեք կապուած մարդ չնետե-
ցի՞նք. անոնք պատասխան տուին,
ու Թագաւորին ըսին. Այո՛, ո՛վ
25 Թագաւոր ։ Անիկայ պատասխան
տուաւ, ու ըսաւ. Ահա ես ըկրա-
կին մէջը չորս արձակուած մարդ կը
տեսնեմ՝ որ կը քալեն. անոնք ա-
մենևին վնաս մը չեն քաշեր. ու
չորրորդին դէմքը թ աստուածներու
26 որդիի մը կը նմանի ։ Այն ատենը
Նաբուգոդոնոսոր՝ բորբոքած կրակի
հնոցին դրանը մօտենալով, խօսե-
ցաւ ու ըսաւ. Ո՛վ Բարձրեալ
Աստուծոյն ծառաները՝ Սեդրաք,
Միսաք և Աբեդնագով՝ դուրս ելէք
ու հոս եկէք ։ Այն ատենը Սեդ-

ը Եսայ. խգ. 2 ։

թ Յոբ. ա. 6 ։ լը. 7 ։ Սաղ. լդ. 7 ։ Հմր. 28 ։

րաք, Միսաք ու Աբեդնագով կրա-
27 կին մէջէն ելան ։ Եւ կուսակալ-
ները, նախարարները ու կառա-
վարիչները, ու Թագաւորին խոր-
հրդականները ժողվուեցան, և տե-
սան այս մարդիկները, ժ որ անոնց
մարմիններուն վրայ կրակը ամենևին
չտիրեց, ու անոնց գլխուն մէկ մա-
զը չխանձեցաւ, ու անոնց անդ-
րավարտիքները գոյներնին չնետե-
ցին. անոնց վրայ կրակին հոտը
անգամ չկար ։
28 Պատասխան տուաւ Նաբուգո-
դոնոսոր՝ ու ըսաւ. Օրհնեա՛լ ըլլայ
Սեդրաքին, Միսաքին ու Աբեդնա-
գովին Աստուածը, որ իր հրեշտա-
կը խրկեց, ու իր ծառաները ազա-
տեց. վասն զի ի անոր ապաւինելով՝
Թագաւորին խօսքը անարգեցին,
ու իրենց մարմինները կրակի տուին,
որպէս զի իրենց Աստուծմէն զատ՝
ուրիշ աստուծոյ մը ծառայութիւն
29 ու երկրպագութիւն չընեն ։ լ Արդ՝
ես հրաման կու տամ՝ որ ամէն
ժողովուրդ, ազգ ու լեզու, որ
Սեդրաքին, Միսաքին ու Աբեդնա-
գովին Աստուծոյն դէմ սխալ բան
մը ըսէ, խ կտոր կտոր ըլլայ, ու ա-
նոր տունը աղբանոց ըլլայ. ծ վասն
զի ուրիշ աստուած չկայ, որ կա-
30 րող ըլլայ այսպէս ազատելու ։ Այն
ատենը Թագաւորը աւելի մեծցուց
Սեդրաքը, Միսաքը ու Աբեդնա-
գովը Բաբելոնի գաւառին մէջ ։

Ն. Ք. ՉԲ.
Իբր 580

ժ Եբր. ժա. 34 ։

ի Սաղ. լդ. 7, 8 ։ Երեմ. ժէ. 7 ։ Տես. գլ. գ. 22, 23 ։

լ Գլ. զ. 26 ։

խ Գլ. բ. 5 ։
ծ Գլ. զ. 27 ։

## ԳԼ. Դ

1 Նաբուգոդոնոսոր կը խոստովանի Աստուծոյ Թագաւորութիւնը. 4 կը խօսի իր երազին վրայով, որ մոգերը չէին կրցեր մեկնել ։ 8 Դանիէլ երազը կը լսէ. 19 զանիկայ կը մեկնէ ։ 28 Երազին կատարուելուն պատմութիւնը ։

1 Նաբուգոդոնոսոր Թագաւոր՝ բո-
լոր երկրի վրայ բնակող կ բոլոր
ժողովուրդներուն, ազգերուն ու
լեզուներուն. Ձեր խաղաղութիւնը
2 շատնայ ։ Իմ առջևս հաճոյ երևե-
ցաւ, որ հ Բարձրեալ Աստուծոյն
ինծի ըրած նշանները ու հրաշքնե-
3 րը յայտնեմ ։ ձ Անոր նշանները
ի՛նչ մեծ, ու հրաշքները ի՛նչ
զօրաւոր են. անոր Թագաւորու-
թիւնը ղ յաւիտենական Թագաւո-
րութիւն է. ու անոր իշխանու-
թիւնը դարէ 'ի դար կը մնայ ։
4 Ես Նաբուգոդոնոսորս երբոր իմ
տանս մէջ հանգիստ էի, ու պալա-
5 տիս մէջ կը զուարճանայի, Երազ
տեսայ, որ զիս վախցուց. ճ և ան-
կողինիս վրայ իմ խորհուրդներս,
ու իմ գլխուս տեսիլքները զիս
6 խռովեցուցին ։ Ուստի Բաբելո-
նին բոլոր իմաստունները իմ առ-
ջևս բերելու հրաման ըրի որ ա-

Իբր 570
կ Գլ. գ. 4 ։ զ. 25 ։

հ Գլ. գ. 26 ։

ձ Գլ. զ. 27 ։

ղ Հմր 34 ։ Գլ. բ. 44 ։ զ. 26 ։

ճ Գլ. բ. 28, 29 ։

մ Գլ. բ. 1 ։

Ն. Ք. ԴԱ. մօտ 570

նոնք ինծի երազին մեկնութիւնը
7 գիտցընեն ։ Ետքը եկան մոգերը,
հմայողները, Քաղդեանները ու բաղ-
նայողները եկան, ու ես երազը ա-
նոնց առջեւը ըսի. բայց անոնք
չկրցան մեկնութիւնը ինծի գիտ-
8 ցընել ։ Ու վերջապէս Դանիէլը
առջեւս եկաւ, որուն անունը՝ իմ
աստուծոյս անուանը համեմատ՝
Բաղտասասար է, ու որ իր
ներսի դին սուրբ աստուածներուն
հոգին կայ, ու անոր առջեւը երա-
9 զը պատմեցի ու ըսի. Ով մոգերուն
իշխանը Բաղտասասար. որովհետեւ
գիտեմ որ քու ներսի դիդ սուրբ
աստուածներուն հոգին կայ, ու
քեզի բնաւ մէկ գաղտնիք մը նե-
ղութիւն չտար. տես տեսած երա-
զիս տեսիլքները, ու դուն անոնց
մեկնութիւնը ըսէ՛ ։
10 Իմ անկողինիս մէջ գլխուս տե-
սիլքները ասոնք էին. Ես կը տես-
նէի որ՝ ահա երկրին մէջ ծառ մը
կար, ու անոր բարձրութիւնը մեծ
11 էր ։ Այն ծառը մեծցաւ, եւ ու-
ժովցաւ, ու անոր բարձրութիւնը
մինչեւ երկինքը հասաւ. ու անիկայ
բոլոր երկրիս ծայրերէն կը տես-
12 նուէր ։ Անոր տերեւները գեղեցիկ,
ու պտուղը առատ էր. եւ անոր
վրայ ամենուն համար կերակուր
կար. դաշտի անասունները անոր
շուքին տակը կը նստէին, ու եր-
կինքի թռչունները անոր ոստերուն
վրայ կը բնակէին, եւ ամէն մարմին
13 անկէ կը կերակրուէր ։ Անկողինիս
վրայ գլխուս տեսիլքներուն մէջ կը
տեսնէի որ՝ ահա երկինքէն *սուրբ
14 հրեշտակ մը" իջաւ. Անիկայ ու-
ժով կանչեց, ու ասանկ ըսաւ.
Ծառը կտրեցէ՛ք, ու ոստերը մէկ-
դի՛ հանեցէք, տերեւները թօթա-
փեցէ՛ք, ու պտուղները ցրուեցէ՛ք.
անոր տակէն անասունները, ու
ոստերէն թռչունները փախչին.
15 Բայց արմատներուն բունը երկրի
մէջ թողուցէ՛ք. ու երկաթէ եւ
պղնձէ կապանքով դաշտի խոտե-
րուն մէջը ըլլայ, ու երկինքին
ցօղովը թրջուի, եւ անոր բաժինը
անասուններու հետ՝ երկրի խոտին
16 մէջ ըլլայ. Անոր սիրտը մարդու
սրտէն փոխուի, ու անոր՝ անասունի
սիրտ տրուի, եւ անոր վրայէն
17 եօթը ժամանակ անցնի ։ Այս
բանը հրեշտակներուն վճիռովն է,
ու աս խնդիրքը սուրբերուն խօս-
քովն է. որպէս զի ապրողները
գիտնան թէ Բարձրեալը կը տիրէ
մարդոց թագաւորութեանը վրայ,
ու զանիկայ իր ուզածին կու տայ,
ու անոր վրայ՝ մարդոց անարգը կը
18 դնէ ։ Աս Նաբուգոդոնոսոր թա-
գաւորս՝ աս երազը տեսայ. ու
դուն՝ ով Բաղտասասար՝ անոր
մեկնութիւնը ըսէ. վասն զի իմ
թագաւորութեանս բոլոր իմաս-
տունները կարող չեղան անոր մեկ-
նութիւնը ինծի գիտցընելու. բայց
դուն կարող ես. վասն զի քու ներ-
սի դիդ սուրբ աստուածներուն հո-
գին կայ ։
19 Այն ատենը Դանիէլ՝ որուն ա-
նունը Բաղտասասար էր, մէկ ժա-
մու չափ" հիացած մնաց. ու անոր
խորհուրդները զանիկայ խռովեցու-
ցին ։ Պատասխան տուաւ թա-
գաւորը, ու ըսաւ. Ով Բաղտա-
սասար՝ երազը, կամ անոր մեկնու-
թիւնը քեզ չխռովեցընէ. պատաս-
խան տուաւ Բաղտասասար, ու ը-
սաւ. Ով տէր իմ, երազը՝ քեզ
ատողներուն, ու անոր մեկնու-
թիւնը՝ քու թշնամիներուդ ըլլայ ։
20 Այն տեսած ծառդ՝ որ մեծցաւ, եւ
ուժովցաւ, ու անոր բարձրութիւ-
նը մինչեւ երկինքը հասաւ, ու անի-
կայ բոլոր երկրի մէջ կը տեսնուէր,
21 Ու անոր տերեւները գեղեցիկ, ու
պտուղը առատ էր, ու անոր վրայ
ամենուն համար կերակուր կար,
անոր տակը դաշտի անասունները
կը բնակէին, ու անոր ոստերուն
վրայ երկինքի թռչունները կը կե-
22 նային, Անիկայ դուն ես՝ ով
թագաւոր, որ մեծցար, եւ ուժով-
ցար. եւ քու մեծութիւնդ բարձ-
րացաւ, ու մինչեւ երկինքը հասաւ,
ու քու իշխանութիւնդ մինչեւ
23 երկրիս ծայրերը հասաւ ։ Ու որով-
հետեւ թագաւորը մէկ սուրբ հրեշ-
տակ մը տեսաւ, որ երկինքէն ի-
ջաւ, ու ըսաւ. Ծառը կտրեցէք,
ու զանիկայ աւրեցէ՛ք. բայց անոր
արմատներուն բունը երկրի մէջը
թողուցէ՛ք, ու երկաթէ եւ պղնձէ
կապանքով դաշտի խոտերուն մէջ
ըլլայ, ու երկինքին ցօղովը թըր-
ջուի, եւ անոր բաժինը դաշտի ան-
ասուններուն հետ ըլլայ, մինչեւ որ
անոր վրայէն եօթը ժամանակ անց-
24 նի, Աս է մեկնութիւնը՝ ով թա-
գաւոր, եւ աս է Բարձրելոյն վճիռը՝
որ իմ թագաւոր տիրոջս վրայ
25 հասած է. Քեզ մարդոց մէջէն
պիտի վռընտեն, եւ քու բնակու-
թիւնդ դաշտի անասուններուն
հետ պիտի ըլլայ. ու քեզ պիտի
թողուն՝ որ արջառներու պէս խոտ
ուտես, ու երկինքին ցօղովը թըր-
ջուիս. եւ քու վրայէդ եօթը ժա-
մանակ պիտի անցնի, մինչեւ որ
գիտնաս թէ մարդոց թագաւորու-
թեանը վրայ Բարձրեալը կը տիրէ,
ու զանիկայ իր ուզածին կու
26 տայ ։ Ու որ ըսուեցաւ թէ՝ ան

* Գաղտ. պահապան ու սուրբ մը

Ն. Ք. ԴԱ. մօտ 570

Ն. Ք. ԶԳ.
Իբր 570

ծառին արմատներուն բունը թո-
ղուի, է որ՝ դուն երկնաւոր իշ-
խանութիւնը ճանչնալէդ ետքը,
քու թագաւորութիւնդ քեզի պի-
27 տի հաստատուի։ Անոր համար՝
ո՛վ թագաւոր, թող իմ խրատս
քեզի հաճոյ երեւնայ. քու մեղքե-
րըդ՝ արդարութեամբ, ու քու ան-
օրէնութիւններդ՝ աղքատներուն
ողորմելով քաւէ. գուցէ հան-
գըստութիւնդ երկըննայ։
28 Աս ամէնը՝ Նաբուգոդոնոսոր
29 թագաւորին վրայ եկաւ։ Տաս-
ուերկու ամիսէն ետքը՝ երբոր Բա-
բելոնի թագաւորութեանը պալա-
30 տին վրայ կը ճեմէր, թագաւորը
խօսեցաւ, ու ըսաւ. Աս չէ՞ ան
մեծ Բաբելոնը՝ որ ես իմ զօրու-
թեամբս ու կարողութեամբս՝ իմ
մեծութեանս փառքին համար
թագաւորութեան տուն շինեցի։
31 Երբոր խօսքը դեռ թագաւորին
բերանն էր, երկինքէն ձայն մը
իջաւ, Քեզի կ'ըսուի, ո՛վ Նաբու-
գոդոնոսոր թագաւոր, թագաւո-
32 րութիւնը քեզմէ գնաց. Ու քեզ
մարդոց մէջէն պիտի վռնտեն, և
քու բնակութիւնդ դաշտի անա-
սուններուն հետ պիտի ըլլայ. քեզ
պիտի թողուն որ արջառներու պէս
խոտ ուտես. ու քու վրայէդ եօթը
ժամանակ պիտի անցնի, մինչև որ
գիտնաս թէ մարդոց թագաւորու-
թեանը վրայ Բարձրեալը կը տիրէ,
ու զանիկայ իր ուզածին կու տայ։
33 Նոյն ժամուն մէջ աս խօսքը Նա-
բուգոդոնոսորին վրայ կատարուե-
ցաւ. ու մարդոց մէջէն վռնտուե-
ցաւ, ու արջառներու պէս խոտ
կ'ուտէր, և անոր մարմինը երկինքին
ցօղովը կը թրջուէր, մինչև որ
մազերը՝ արծիւներու փետուրնե-
րուն պէս, ու ըղունգները՝ թռչ-
չուններու ճանկերուն պէս եր-
կընցան։
34 Եւ ան օրերուն վերջը՝ ես Նա-
բուգոդոնոսորս՝ աչքերս երկինքը
վերցուցի, ու խելքս ինծի դար-
ձաւ, և Բարձրեալը օրհնեցի, ու
գովեցի ու փառաւորեցի զանիկայ՝
որ յաւիտեան կենդանի է, ու
անոր իշխանութիւնը յաւիտե-
նական իշխանութիւն է, և անոր
թագաւորութիւնը դարէ 'ի դար
35 կը մնայ։ Ու երկրիս բոլոր բնա-
կիչները ոչինչի պէս կը սեպուին.
և անիկայ երկնից զօրքերուն մէջ,
ու երկրի բնակիչներուն մէջ իր
ուզածը կը գործէ. ու անոր
ձեռքին դէմ դնող, կամ անոր՝
36 Ի՞նչ կ'ընես ըսող չկայ։ Ան
ատենը խելքս ինծի դարձաւ, ու
իմ թագաւորութեանս պատուոյն

Սաղ. խա. 1. Առ.
Կամ՝ մեկ-դի ձգէ.
Գ Թագ. իա. 29.
Առակ. ժզ. 18. Գլ. ե. 20.
Գլ. ե. 5. Տես Ղու. ժբ. 20.
Հմր 24.
Իբր 569
Հմր 25.
Հմր 26.
Իբր 563
Գլ. ժբ. 7. Յայտ. դ. 10.
Սաղ. ժ. 16. Գլ. բ. 44. է. 14. Միք. դ. 7. Ղու. ա. 33.
Ես. խ. 15, 17.
Սաղ. ճժե. 3. ճլե. 6.
Յոբ. լդ. 29.
Յոբ. թ. 12. Ես. խե. 9. Հռով. թ. 20.
Հմր 26.

հետ՝ իմ փառքս ու մեծվայելչ-
չութիւնս ինծի դարձաւ, և իմ
խորհրդականներս ու մեծամեծ-
ներս զիս փնտռեցին, ու իմ թա-
գաւորութեանս մէջ հաստատուե-
ցայ. և ինծի աւելի մեծ վեհա-
փառութիւն տրուեցաւ։
37 Հիմա ես Նաբուգոդոնոսորս՝
երկնից Թագաւորը կը գովեմ, կը
բարձրացընեմ ու կը փառաւորեմ.
ինչու որ՝ անոր բոլոր գործքերը
ճշմարտութիւն, ու ճամբաները
իրաւունք են. Ու անիկայ կա-
րող է ամբարտաւանութեամբ քա-
լողները ցածցընելու։

Ն. Ք. ԶԲ.
Իբր 563
Տես Յոբ. խբ. 12.
Սաղ. լգ. 4. Յայտ. ժե. 3. ժզ. 7.
Ել. ժը. 11. Գլ. ե. 20.

## ԳԼ. Ե

1 Բաղտասարին ամբարիշտ խնճոյքը։ 5 Ձեռքի մը գրուածը՝ որ կախարդները չեն կրնար կարդալ, թագաւորին սրտին խռովութիւն կը պատճառէ։ 10 Թագուհիին խրատովը Դանիէլը կը բերուի. 17 որ թագաւորին ամբարտաւանութիւնը ու կռապաշտութիւնը յանդիմանելով, 25 կը կարդայ ու կը մեկնէ ան գրուածը։ 30 Թագաւորութիւնը Մարաց ձեռքը կ'անցնի։

1 Բաղտասար թագաւորը իր մեծա-
մեծներէն հազար հոգիի մեծ
կոչունք ըրաւ, ու հազարին առ-
2 ջեւը գինի խմեց։ Ու երբոր Բաղ-
տասար գինիէն զուարթացաւ,
հրամայեց որ իր հօրը Նաբու-
գոդոնոսորին՝ Երուսաղեմի տաճա-
րէն հանած ոսկիէ ու արծաթէ
անօթները բերեն. որպէս զի թա-
գաւորը, ու իր մեծամեծները, իր
կնիկները ու հարճերը անոնցմով
3 խմեն։ Ուստի Երուսաղեմ եղող
Աստուծոյ տանը տաճարէն հա-
նուած ոսկի անօթները բերին.
և թագաւորը, ու իր մեծամեծնե-
րը, իր կնիկները ու հարճերը
4 անոնցմով խմեցին։ Անոնք գինի
խմեցին, ու ոսկիէ, արծաթէ,
պղնձէ, երկաթէ, փայտէ ու քարէ
աստուածները գովեցին։
5 Նոյն ժամուն մէջ՝ մարդու
ձեռքի մատեր ելան, ու աշտանա-
կին դիմացը՝ թագաւորական պա-
լատին պատին ծեփին վրայ գրե-
ցին. և թագաւորը ան գրող ձեռ-
6 քին թաթը տեսաւ։ Ան ատե-
նը թագաւորին գոյնը փոխուե-
ցաւ, ու անոր խորհուրդները զա-
նիկայ խռովեցուցին. այնպէս որ
մէջքին յօդուածները կը քա-
կուէին, ու ծունկերը իրարու
7 կը զարնէին։ Թագաւորը բարձ-
րաձայն աղաղակեց՝ որ հմայող-
ները, Քաղդէացիները ու բաղդ նա-
յողները բերեն. Թագաւորը Բա-
բելոնի իմաստուններուն խօսեցաւ՝
ու ըսաւ. Ով որ աս գիրը կար-
դայ, ու մեկնութիւնը ինծի ի-

Իբր 538
Եսթ. ա. 3.
Գլ. ա. 2. Տես Երեմ. ծբ. 19.
Կամ՝ Նախահօրը. Հմր 11, 13. Բ Թագ. թ. 7. Բ Մն. ժե. 16. Երեմ. իէ. 7.
Յայտ. թ. 20.
Գլ. դ. 31.
Նաւ. բ. 10.
Գլ. բ. 2. դ. 6.
Ես. խէ. 13.

Ն. Ք. գՔ. երր 538

մացընէ, ծիրանի պիտի հագնի,
ու անոր պարանոցը ոսկի մանեակ
պէտք դրուի. և թագաւորութեա-
նը մէջ երրորդ իշխան պիտի ըլ-
8 լայ ։ Ուստի թագաւորին բոլոր
իմաստունները եկան. բայց գիրը
կարդալու, ու անոր մեկնութիւնը
թագաւորին գիտցընելու կարող
9 չեղան ։ Ան ատենը Բաղտասար
թագաւորը սաստիկ խռովեցաւ,
ու երեսին գոյնը փոխուեցաւ.
անոր մեծամեծներն ալ սարսափե-
ցան ։
10 Եւ թագուհին՝ թագաւորին ու
անոր մեծամեծացը խօսքերուն
պատճառաւը՝ կոչունքին տունը
եկաւ. ու թագուհին խօսեցաւ՝
ու ըսաւ. Ո՛վ թագաւոր՝ յաւի-
տեան ողջ կեցիր. քու խորհուրդ-
ներդ քեզ չխռովեցընեն, ու ե-
11 րեսիդ գոյնը չփոխուի. Քու
թագաւորութեանդ մէջ մարդ մը
կայ, որ անոր ներսի դին սուրբ
աստուածներուն հոգին կայ, և
քու հօրդ օրերը՝ անոր վրայ լոյս,
հանճար, ու աստուծոց իմաս-
տութեանը պէս իմաստութիւն
գտնուեցաւ, և քու հայրդ Նա-
բուգոդոնոսոր թագաւորը՝ զանի-
կայ մոգերուն, հմայողներուն,
Քաղդեաններուն ու բաղդ նայող-
12 ներուն վրայ իշխան դրաւ ։ Քանզի
աս մարդուն քովը այսինքն Դա-
նիէլին՝ որուն անունը թագաւորը
Բաղտասասար դրաւ, գերազանց
հոգի, գիտութիւն ու հանճար կայ՝
երազները մեկնելու, առեղծուած-
ները յայտնելու, ու դժուարին
խնդիրները լուծելու. հիմա Դա-
նիէլը թող կանչուի, ու անիկայ
մեկնութիւնը պիտի իմացընէ ։
13 Ան ատենը Դանիէլը թագաւո-
րին առջևը տարուեցաւ. թագա-
ւորը խօսեցաւ, ու Դանիէլին ը-
սաւ. Իմ թագաւոր հօրս՝ Հրէ-
աստանէն բերած Հրէաստանի գե-
րիներէն եղող Դանիէլը դո՞ւն ես.
14 Վասն զի քեզի համար լսեցի որ՝
քու ներսի դիդ աստուածներուն
հոգին կայ, և քու քովդ լոյս,
հանճար ու գերազանց իմաստու-
15 թիւն կը գտնուի ։ Ու հիմա իմ
առջևս իմաստուններ ու հմայող-
ներ բերուեցան, որ աս գրուածը
կարդան, ու անոր մեկնութիւնը
ինծի գիտցընեն. բայց անոնք չկըր-
ցան աս խօսքին մեկնութիւնը իմա-
16 ցընել. Ու ես քեզի համար լսեցի
որ՝ մեկնութիւններ տալու, ու դըժ-
ուարին խնդիրներ լուծելու կա-
րող ես. Հիմա թէ որ դուն ան
գրուածը կարդալու, և անոր մեկ-
նութիւնը ինծի գիտցընելու կարող

ը Ես. գլ. ն. 2.
ր Գլ. բ. 27. դ. 7.
ժ Գլ. բ. 1.
է Գլ. բ. 4. գ. 9.
ւ Գլ. բ. 48. դ. 8, 9, 18.
խ Գլ. դ. 9.
ծ Գլ. զ. 3.
կ Գլ. ա. 7.
հ Հմր 11, 12.
յ Հմր 7, 8.
ղ Հմր 7.

ըլլաս, ծիրանի պիտի հագնիս, և
քու պարանոցդ ոսկի մանեակ պէտք
դրուի, ու թագաւորութեանը մէջ
երրորդ իշխան պիտի ըլլաս ։
17 Ան ատենը Դանիէլ պատասխան
տուաւ, ու թագաւորին առջևը
ըսաւ. Քու պարգևներդ քեզի ըլ-
լան, ու տուրքերդ ուրիշին տուր.
բայց ես ան գրուածը թագաւորին
պիտի կարդամ, ու մեկնութիւնը
18 անոր գիտցընեմ ։ Ո՛վ թագաւոր՝
Բարձրեալ Աստուածը՝ քու հօրդ
Նաբուգոդոնոսորին՝ թագաւորու-
թիւն ու մեծութիւն և պատիւ ու
19 փառք տուաւ. Եւ անոր տուած
մեծութենէն՝ բոլոր ժողովուրդ-
ները, ազգերը ու լեզուները՝ անոր
երեսէն կը դողային ու կը վախնա-
յին. անիկայ ուզածը կը մեռցը-
նէր, և ուզածը ողջ կը թողուր.
անիկայ ուզածը կը բարձրացընէր,
20 և ուզածը կը ցածցընէր ։ Բայց
երբոր անոր սիրտը բարձրացաւ,
ու անոր հոգին ամբարտաւանու-
թեամբ կարծրացաւ, իր թագա-
ւորութեանը աթոռէն ինկաւ, ու
21 պատիւը անկէ առնուեցաւ. Եւ
անիկայ մարդոց որդիներուն մէ-
ջէն վռընտուեցաւ, ու անոր սիր-
տը անասնոց պէս եղաւ, և անոր
բնակութիւնը վայրենի էշերուն
հետ եղաւ. արջառներու պէս խոտ
կը կերցընէին անոր. ու անոր մար-
մինը երկինքին ցօղովը կը թրջուէր,
մինչև որ գիտցաւ թէ մարդոց
թագաւորութեանը վրայ Բարձ-
րեալ Աստուածը կը տիրէ, ու իր
ուզած մարդը անոր վրայ կը դնէ ։
22 Ու դուն՝ ով Բաղտասար անոր որ-
դին՝ քու սիրտդ չխոնարհեցուցիր,
23 թէև աս ամէնը գիտցար. Հապա
երկնից Տէրոջը դէմ քեզ բարձրա-
ցուցիր. ու անոր տանը անօթները
քու առջևդ բերին. և դուն, ու
քու մեծամեծներդ, քու կնիկներդ
ու հարճերդ՝ անոնցմով գինի խմե-
ցիք. և դուն՝ արծաթէ, ոսկիէ,
պղնձէ, երկաթէ, փայտէ ու քա-
րէ շինուած աստուածները գովե-
ցիր, որոնք ո՛չ կը տեսնեն, ո՛չ կը
լսեն, ո՛չ ալ բան մը գիտեն. և ան
Աստուածը՝ որուն ձեռքն է քու
շունչդ, և որուն են քու ամէն
24 ճամբաներդ, չփառաւորեցիր. Ա-
նոր համար ան ձեռքին թաթը անոր
երեսէն ղրկուեցաւ, ու աս գրուա-
25 ծը գրուեցաւ ։ Եւ գրուած գիրը
ասիկայ է. *ՄԱՆԷ, ՄԱՆԷ, ԹԵ-
26 ԿԷՂ ՈՒ ՓԱՐՍԻՆ ։ Աս խօսքին
մեկնութիւնը աս է. Մանէ. Աս-
տուած քու թագաւորութիւնդ
համրեց, ու զանիկայ վերջացուց ։
27 Թեկէղ. կշիռքով կշռուեցար,

Ն. Ք. գՔ. երր 538
ք Գլ. բ. 6.
մ Գլ. բ. 37, 38. դ. 17, 22, 25.
յ Երեմ. իէ. 7. Գլ. գ. 4.
ն Գլ. դ. 30, 37.
շ Գլ. դ. 32. Ա.
ո Գլ. դ. 17, 25.
չ Ա Մն. լդ. 23. լէ. 12.
պ Հմր 3, 4.
ջ Սաղ. ճժե. 5, 6.
ռ Երեմ. ժ. 23.
* Այսինքն Համրուած, համրուած, կշռուած ու բաժնուած ։
ս Յոբ. լա. 6. Սաղ. կբ. 9.

Ն. Ք. ՆԳ. Իրր 538

Հես. խա. 2։ Հմր 31։ Գլ. Թ. 1։
Գլ. Զ. 28։
Հմր 7։
Երեմ. ծա. 31, 39, 57։
Գլ. Թ. 1։

28 ու պակաս գտնուեցար ։ Փարէս.
քու թագաւորութիւնդ բաժնուե-
ցաւ, և Մարաց ու Պարսից տը-
րուեցաւ ։
29 Ան ատենը Բաղտասար հրամա-
յեց, ու Դանիէլին ծիրանի հագ-
ցուցին, ու պարանոցը ոսկի մա-
նեակ դրին, և անոր համար մունե-
տիկ կանչել տուին՝ որ թագաւո-
րութեանը մէջ երրորդ իշխան ըլ-
լայ ։
30 Նոյն գիշերը Քաղդէացւոց Բաղ-
տասար թագաւորը սպաննուե-
31 ցաւ ։ Ու թագաւորութիւնը
Մարաց Դարեհ [illegible] առաւ,
երբոր վաթսունուերկու տարեկա-
նի չափ էր ։

## ԳԼ. Զ

1 Դանիէլ՝ թագաւորութեանը երեքի հրամա-
նատարը կ՚ըլլայ. 4 միւս հրամանատարները
և կուսակալները Դանիէլին դէմ դաւաճանու-
թեան խորհուրդ ընելով՝ մէկ կռապաշտական
վճիռ մը ձեռք կը բերեն ։ 10 Դանիէլ կ՚ամ-
բաստանուի պատուիրանազանցութեան յան-
ցանքով, ու առիւծներուն գուբը կը ձգուի ։
18 Դանիէլ կ՚ազատի. 24 իսկ անոր թշնամի-
ները առիւծներէն կը պատառուին ։ 25 Թա-
գաւորը հրովարտակով մը կը փառաւորէ զԱս-
տուած ։

Տն. Եսթ. ա. 1։

1 Դարեհին առջևը հաճոյ երևցաւ,
որ թագաւորութեանը վրայ
հարիւր քսան կուսակալներ դնէ,
որոնք բոլոր թագաւորութեանը
2 մէջ ըլլան. Եւ անոնց վրայ իրեք
հրամանատար՝ որոնց մէկը Դանիէլ
էր. որպէս զի ան կուսակալները
ասոնց հաշիւ տան, որ թագաւորին
3 վնաս չըլլայ ։ Ու աս Դանիէլը՝
միւս հրամանատարներէն և կուսա-
կալներէն նախապատիւ էր. վասն
զի անոր վրայ գերազանց հոգի
կար. ու թագաւորը միտք ունէր
որ զանիկայ բոլոր թագաւորու-
թեանը վրայ դնէ ։

Գլ. Ե. 12։
Իրր 537
Ժող. Դ. 4։

4 Եւ հրամանատարները ու կու-
սակալները՝ թագաւորութեանը
գործերուն կողմէ՝ Դանիէլին դէմ
պատճառ մը գտնելու կը ջանային.
բայց անոնք բնաւ մէկ պատճառ մը
կամ չարութիւն մը գտնելու կա-
րող չեղան. վասն զի անիկայ հա-
ւատարիմ էր. ու անոր վրայ բնաւ
մէկ յանցանք մը կամ չարութիւն
5 մը չգտնուեցաւ ։ Ուստի աս մար-
դիկը ըսին. Մենք աս Դանիէլին
դէմ ամենևին մէկ պատճառ մը
պիտի չգտնենք, բայց եթէ անոր
դէմ՝ անոր Աստուծոյն օրէնքին
կողմանէ գտնենք ։
6 Ան ատենը հրամանատարները ու
կուսակալները թագաւորին քովը
ժողվուեցան, ու անոր այսպէս ը-
սին. Ո՛վ Դարեհ թագաւոր՝ յա-
7 ւիտեան ողջ կեցիր ։ Թագաւորու-
թեանը բոլոր հրամանատարները,

Նեեմ. Բ. 3։ Հմր 21։ Գլ. Բ. 4։

նախարարները, կուսակալները,
խորհրդականները ու կառավարիչնե-
րը խորհուրդ ըրին, որ թագաւո-
րական հրաման մը որոշուի, և ար-
գելիչ օրէնք մը հաստատուի, թէ
ով որ մինչև երեսուն օր խնդրուած
մը խնդրէ մէկ աստուծմէ մը, կամ
մարդէ մը, բաց 'ի քեզմէ՝ ով
թագաւոր, առիւծներուն գուբը
8 նետուի ։ Հիմա ով թագաւոր՝
այս արգելիչ օրէնքը հաստատէ՝, ու
հրովարտակը ստորագրէ՝, որ Մա-
րաց ու Պարսից անխափանելի օ-
9 րէնքին համեմատ չփոխուի ։ Ա-
սոր համար Դարեհ թագաւորը
հրովարտակը ու արգելիչ օրէնքը
ստորագրեց ։
10 Ու երբոր Դանիէլ իմացաւ թէ
հրովարտակը ստորագրուեցաւ, իր
տունը գնաց. ու իր սենեակին մէջը
պատուհանները դէպ 'ի Երուսա-
ղէմ բաց էին, և օրը իրեք անգամ
ծունկի վրայ գալով աղօթք կ՚ը-
նէր, ու իր Աստուծոյն գոհութիւն
կը մատուցանէր իր առջի սովորու-
11 թեանը պէս ։ Ուստի աս մարդիկ-
ները ժողվուեցան, ու Դանիէլը
գտան՝ որ իր Աստուծոյն առջևը
12 աղօթք ու աղաչանք կ՚ընէր ։ Ան
ատենը մօտեցան, ու թագաւորին
առջևը՝ թագաւորին արգելիչ օ-
րէնքին վրայով ըսին. Դուն մէկ
արգելիչ օրէնք մը չստորագրեցի՞ր,
թէ ով որ մինչև երեսուն օր բան մը
խնդրէ մէկ աստուծմէ մը, կամ
մարդէ մը, բաց 'ի քեզմէ՝ ով թա-
գաւոր, առիւծներուն գուբը նե-
տուի. Թագաւորը պատասխան
տուաւ, ու ըսաւ. Աս խօսքը ճշմա-
րիտ է՝ Մարաց ու Պարսից անխա-
13 փանելի օրէնքին համեմատ ։ Ան ա-
տենը անոնք պատասխան տուին,
ու թագաւորին առջևը ըսին. Հը-
րէաստանի գերութեանը որդինե-
րէն եղող Դանիէլը՝ քեզ և քու
ստորագրած արգելիչ օրէնքդ բանի
տեղ չսեպեր՝ ով թագաւոր, հա-
պա օրը իրեք անգամ իր խնդ-
14 րուածքը կը մատուցանէ ։ Ան ա-
տենը թագաւորը այս խօսքերը լսա-
ծին պէս, ինքնիրեն շատ տրտը-
մեցաւ, ու իր սիրտը Դանիէ-
լին վրայ դրաւ որ զանիկայ ազա-
տէ, ու մինչև արևուն մտնելը կը
ջանար որ զանիկայ ազատէ ։
15 Բայց ան մարդիկները թագաւորին
քովը ժողվուեցան, ու թագաւո-
րին ըսին. Ո՛վ թագաւոր՝ գիտցի՛ր
որ Մարաց ու Պարսից օրէնքը աս
է, որ թագաւորին ամէն հաստա-
տած արգելիչ օրէնքը ու հրամանը
16 չփոխուիր ։ Ան ատենը թագաւորը
հրամայեց, ու Դանիէլը բերին, և

Ն. Ք. ՆԳ. Իրր 537
Եսթ. ա. 19։ Ր. Գ։ Հմր 12, 15։
Գ Թագ. Ը. 44, 48։ Սաղ. Ե. 7։ Յովն. Բ. 4։
Սաղ. ԾԵ. 17։ Գործ. Բ. 1, 2, 15։ Գ. 1։ Ժ. 9։
Գլ. Գ. 8։
Հմր 8։
Գլ. Ա. 6։ Ե. 13։
Գլ. Գ. 12։
Մրկ. Զ. 26։
Հմր 8։

Ն. Ք. գՖ. Իրր 537

ծ Ողբ. գ. 53։
կ Մատ. իէ. 66։
ժ Կամ՝ համարում կերակուրներ
հ Գլ. բ. 1։
յ Տես Գլ. գ. 15։
ն Գլ. բ. 4։
շ Գլ. գ. 28։
ո Եբր. ժա. 33։
չ Եբր. ժա. 33։
պ Եսթ. թ. 10։ Տես բ Օր. իդ. 16։ դ Թագ. ժդ. 6։
ջ Գլ. դ. 1։
ռ Գլ. դ. 29։
ս Սաղ. ղԹ. 1։
վ Գլ. դ. 34։
տ Գլ. բ. 44։ դ. 3. 34։ է. 14. 27։ Ղուկ. ա. 33։

զանիկայ առիւծներուն գուբը նե-
տեցին։ Թագաւորը Դանիէլին խօ-
սեցաւ, ու ըսաւ. Քու Աստուածդ՝
որ դուն անդադար կը պաշտես,
17 անիկայ քեզ պիտի ազատէ։ ծՈւ
մէկ քար մը բերին, ու գուբին բե-
րանը դրին. կԵւ Թագաւորը զանի-
կայ իր կնիքովը, ու իր մեծամեծ-
ներուն կնիքովը կնքեց, որ Դանիէ-
18 լին վրայով բան մը չփոխուի։ Ետ-
քը Թագաւորը իր տունը գնաց, ու
գիշերը անօթի անցուց, և իր առ-
ջևը ժնուագարաններ բերել չը-
տուաւ. հու քունը իրմէ փախաւ։
19 Եւ Թագաւորը արշալոյսին կա-
նուխ ելաւ, ու արտորնօք առիւծ-
20 ներուն գուբը գնաց։ Ու երբոր
գուբին մօտեցաւ, տրտում ձայ-
նով մը Դանիէլին պոռաց. և Թա-
գաւորը խօսեցաւ, ու Դանիէլին
ըսաւ. Ով Դանիէլ՝ կենդանի
Աստուծոյ ծառան, յքու Աստուա-
ծըդ՝ որն որ դուն անդադար կը
պաշտես, կարող եղա՞ւ քեզ ա-
21 ռիւծներէն ազատելու։ Ան ատենը
Դանիէլը Թագաւորին ըսաւ. նՈվ
Թագաւոր՝ յաւիտեան ողջ կեցիր.
22 շԻմ Աստուածս իր հրեշտակը խըր-
կեց, ու ոառիւծներուն բերանը
գոցեց, ու ինծի վնաս չտուին.
վասն զի անոր առջևը՝ իմ վրաս
անմեղութիւն գտնուեցաւ. և քու
առջևդ ալ՝ ով Թագաւոր, մէկ
23 յանցանք մը ըրած չեմ։ Անատենը
Թագաւորը շատ ուրախացաւ, ու
հրամայեց որ Դանիէլը գուբէն հա-
նեն. և Դանիէլը գուբէն հանեցին.
ու անոր վրան ամենևին մէկ վնաս
մը չգտնուեցաւ. չվասն զի իր Աս-
24 տուծոյն հաւատաց։ Եւ Թագա-
ւորը հրամայեց, ու Դանիէլին վը-
րայով չարախօսութիւն ընող մար-
դիկները բերին. և զանոնք, պ
ջանոնց տղաքները ու կնիկները ա-
ռիւծներուն գուբը նետեցին. ու
անոնք դեռ գուբին յատակը չհա-
սած՝ առիւծները անոնց վրայ տի-
րեցին. ու անոնց բոլոր ոսկորները
փշրեցին։
25 ջԱն ատենը Դարեհ Թագաւորը՝
բոլոր երկրի վրայ բնակող ժողո-
վուրդներուն, ազգերուն ու լեզու-
ներուն այսպէս գրեց. Ձեր խաղա-
26 ղութիւնը շատնայ. ռԻնծմէ հրա-
ման ելաւ՝ որ իմ Թագաւորու-
թեանս բոլոր իշխանութեանը մէջ՝
սԴանիէլին Աստուծոյն երեսէն դո-
ղան ու վախնան. վվասն զի անի-
կայ կենդանի Աստուած է, ու յա-
ւիտեան կը կենայ. և անոր Թա-
գաւորութիւնը տչաւրուիր, ու
անոր իշխանութիւնը մինչև վերջը
27 կը հասնի։ Անիկայ կ'ազատէ ու կը
փրկէ, և երկինքի մէջ ու երկրի
վրայ ունշաններ ու հրաշքներ կ'ը-
նէ, որ Դանիէլը առիւծներուն
փբերնէն ազատեց։
28 Եւ աս Դանիէլը Դարեհին Թա-
գաւորութեանը, ու քԿիւրոսին Պարսիկ Թագաւորութեանը ատենը
յաջողութիւն գտաւ։

Ն. Ք. գՖ. Իրր 537
ո Գլ. դ. 3։
փ Քաղդ. ձեռքէն
ք Եզր. ա. 1. 2։ Գլ. ա. 21։

## ԳԼ. Է

1 Դանիէլին տեսած տեսիլքը չորս կենդանիներու վրայով. 9 Աստուծոյ Թագաւորութեանը վրայով։ 15 Անոնց մեկնութիւնը։

1 Բաբիլոնի Բաղտասար Թագաւո-
րին առջի տարին՝ աԴանիէլ
երազ տեսաւ, ու բիր անկողինին
մէջ իր գլխուն տեսիլքները. և ա-
նիկայ երազը գրեց, ու բաներուն
2 համառօտութիւնը ըսաւ։ Դանի-
էլ խօսեցաւ ու ըսաւ. Գիշերը
տեսիլքիս մէջ տեսայ որ՝ ահա եր-
կինքին չորս հովերը մեծ ծովուն
3 վրայ կը յարձակէին։ Ու գծովէն
չորս մեծ գազաններ ելան, որոնք
իրարմէ տարբեր էին։
4 Առաջինը դառիւծի պէս էր, ու
արծիւի թևեր ունէր. ու կը տես-
նէի մինչև որ անոր թևերը փըր-
ցուեցան. ու երկրէն վերցաւ, և
մարդու պէս ոտքերուն վրայ կայ-
նեցաւ. ու անոր՝ մարդու սիրտ
տրուեցաւ։
5 եԵւ ահա մէկ ուրիշ երկրորդ
գազան մը արջու նման՝ որ մէկ քո-
ղին վրայ կայնեցաւ, ու բերանը՝
ակռաներուն մէջը՝ երեք կողի ոսկոր
կար. և անոր այսպէս ըսին. Ելի՛ր,
շատ միս կեր։
6 Ասկէ ետքը կը տեսնէի. և ահա
ինձի նման մէկ ուրիշ մը՝ որուն
կռնակին վրայ չորս թռչունի թևեր
կային. և զգազանը չորս գլուխ
ունէր, ու անոր իշխանութիւն
տրուեցաւ։
7 Ասկէ ետքը՝ գիշերուան տեսիլք-
ներու մէջ կը տեսնէի, և ահա
էմէկ չորրորդ գազան մը. անիկայ
ահեղ՝ սոսկալի ու խիստ զօրաւոր
էր. և անիկայ մեծ երկաթէ ակռա-
ներ ունէր. անիկայ կ'ուտէր, ու
կը փշրէր, ու մնացածը ոտքերովը
կը կոխէր, ու իրմէ առաջ եղող
ամէն գազաններէն տարբեր էր. ըև
8 տասը եղջիւր ունէր։ Երբոր ես
ան եղջիւրները կը դիտէի, ահա
թանոնց մէջը մէկ ուրիշ պզտիկ եղ-
ջիւր մը ելաւ, որ անոր առջևէն՝
առջի եղջիւրներուն երեքը խլուե-
ցան. և ահա աս եղջիւրին վրայ՝
ժմարդու աչքերու պէս աչքեր, իու
մեծ բաներ խօսող բերան կար։
9 լԵս կը տեսնէի մինչև որ աթոռ-
ներ դրուեցան, ու խՀինաւուրցը

Իրր 555
ա Թուոց. ժբ. 6։ Տես Ամով. գ. 7։
բ Գլ. բ. 28։
գ Յայտ. ժգ. 1։
դ Օր. իը. 49։ բ Թագ. ա. 23։ Երեմ. դ. 7։ 13։ Խը. 40։ Եզեկ. ժէ. 3։ Ամբ. ա. 8։
ե Գլ. բ. 39։
զ Գլ. ը. 8. 22։
է Գլ. բ. 40։ Հմր 19. 23։
ը Յայտ. ժգ. 1։ Տես Գլ. բ. 41։
թ Հմր 20. 21. 24։ Գլ. ը. 9։
ժ Յայտ. Թ. 7։
ի Սաղ. ժբ. 3։ Հմր 25։ Յայտ. ժգ. 5։
լ Յայտ. ի. 4։
խ Սաղ. դ. 2։ Հմր 13. 22։

Ն․ Ք․ Գ․ Բ․ Իբր 555

նստաւ . անոր զգեստը ձիւնի պէս
ճերմակ ու գլխուն մազը մաքուր
բուրդի պէս էր . անոր աթոռը
կրակի բոցի պէս , և անիւները
10 վառած կրակի պէս էր ։ Անոր առ-
ջեւէն կրակի գետ կ'ելլէր ու կը վա-
զէր . Հազարք հազարաց ծառա-
յութիւն կ'ընէին անոր , և բիւրք
բիւրուց անոր առջեւը կը կայնէին .
ատեանը բազմեցաւ , ու գիրքերը
11 բացուեցան ։ Ան ատենը կը նա-
յէի ան եղջիւրին խօսած մեծ խօս-
քերուն ձայնին համար , ու նայե-
ցայ մինչև որ ան գազանը սպան-
նուեցաւ , և անոր մարմինը կոր-
սուեցաւ , ու կրակի բոցերու տը-
12 րուեցաւ ։ Եւ միւս գազաններուն
իշխանութիւնը վերցուեցաւ . բայց
մինչև ժամանակ մը ու ատեն մը՝
կենաց երկարութիւն տրուեցաւ ա-
13 նոնց ։ Գիշերուան տեսիլքներու
մէջ կը տեսնէի , և ահա երկինքի
ամպերով մարդու Որդւոյն նման
մէկը կու գար , ու մինչև Հինա-
ւուրցը եկաւ . և զանիկայ անոր
14 առջեւը մօտեցուցին ։ Ու անոր
իշխանութիւն՝ պատիւ ու թագա-
ւորութիւն տրուեցաւ , որ ամէն
ժողովուրդները , ազգերը ու լե-
զուները անոր ծառայութիւն ը-
նեն . անոր իշխանութիւնը յաւի-
տենական իշխանութիւն է՝ որ
չանցնիր , ու թագաւորութիւնը
չաւրուիր ։
15 Ես Դանիէլս հոգւով վշտացայ
իմ ներսի դիս , և իմ գլխուս տե-
16 սիլքները զիս խռովեցուցին ։ Հոն
կայնողներէն մէկուն մօտեցայ , ու
աս ամէն բաներուն ճշմարտութիւնը
անոր հարցուցի . և անիկայ ինծի
խօսեցաւ , ու աս բաներուն մեկ-
17 նութիւնը ինծի գիտցուց ։ Աս
չորս մեծ գազանները՝ չորս թագա-
ւորներ են , որոնք երկրէն պիտի
18 ելլեն ։ Եւ թագաւորութիւնը՝
Բարձրելոյն սուրբերը պիտի առ-
նեն , ու անոնք պիտի ժառանգեն
թագաւորութիւնը յաւիտեան , և
յաւիտեանս յաւիտենից ։
19 Ետքը չորրորդ գազանին վրայով
ճշմարիտը գիտնալ ուզեցի , որ ա-
նիկայ բոլոր միւսներէն տարբեր
էր , ու խիստ ահեղ էր . անոր
ակռաները երկաթէ , և ըղունգնե-
րը պղնձէ էին . անիկայ կ'ուտէր ,
կը փշրէր , ու մնացածը ոտքերովը
20 կը կոխէր . Ու անոր գլուխը եղող
տասը եղջիւրներուն վրայով , ու
մէկալ ելածին վրայով՝ որ անոր
առջեւէն իրեքը ինկան , այսինքն ան
եղջիւրին վրայով՝ որ աչքեր ու մեծ
բաներ խօսող բերան ունէր , և
անոր դէմքը միւսներէն մեծ էր ։
21 Ես կը տեսնէի որ ան եղջիւրը
սուրբերուն հետ պատերազմ կ'ընէր,
22 ու անոնց յաղթեց , Մինչև որ
Հինաւուրցը եկաւ , և Բարձրե-
լոյն սուրբերուն իրաւունք տրուե-
ցաւ , ու ժամանակը հասաւ որ
սուրբերը թագաւորութիւնը առին ։
23 Անիկայ այսպէս ըսաւ . Չորրորդ
գազանը՝ երկրի վրայ չորրորդ թա-
գաւորութիւն պիտի ըլլայ , որ ա-
մէն թագաւորութիւններէն տար-
բեր պիտի ըլլայ , ու բոլոր երկիրը
պիտի ուտէ , ու զանիկայ պիտի
24 կոխէ ու փշրէ ։ Եւ ան տասը
եղջիւրները՝ ան թագաւորութե-
նէն ելլելու տասը թագաւորներ
են , ու անոնցմէ ետքը մէկ ուրիշը
պիտի ելլէ , ու անիկայ առջին-
ներէն տարբեր պիտի ըլլայ , և ա-
նիկայ իրեք թագաւոր պիտի կոր-
25 ծանէ . Ու Բարձրելոյն դէմ
խօսքեր պիտի ըսէ , ու Բարձրե-
լոյն սուրբերը պիտի մաշէ , և պի-
տի մտածէ ժամանակներ ու օրէնք-
ներ փոխելու . ու անոնք մինչև
ժամանակ մը , ժամանակներ , ու
կէս ժամանակ անոր ձեռքը պի-
26 տի տրուին ։ Բայց ատեանը
պիտի բազմի , ու անոր իշխանու-
թիւնը պիտի վերցընեն . զանիկայ
մինչև վերջը բնաջինջ պիտի ընեն
27 ու կորսընցընեն ։ Եւ թագաւո-
րութիւնը , ու իշխանութիւնը ,
ու բոլոր երկինքին տակը եղող
թագաւորութեանց մեծութիւնը՝
Բարձրելոյն սուրբերուն ժողովուր-
դին պիտի տրուի . անոր թագա-
ւորութիւնը յաւիտենական թա-
գաւորութիւն է , ու բոլոր իշ-
խանները անոր պիտի ծառայեն ,
ու պիտի հնազանդին ։
28 Խօսքին վերջը մինչև հոս է ։
Զիս Դանիէլս՝ իմ խորհուրդներս
խիստ խռովեցուցին . ու երեսիս
գոյնը փոխուեցաւ . և այս խօսքը
սրտիս մէջը պահեցի ։

## ԳԼ․ Ը

1 Դանիէլին տեսիլքը խոյի ու քօշի վրայով ։ 15 Գաբրիէլ կը քաջալերէ Դանիէլը , ու տեսիլքը կը մեկնէ ։

1 Բաղտասար թագաւորին թագա-
ւորութեանը երրորդ տարին՝
ինծի Դանիէլիս տեսիլք երևցաւ ,
2 ան առջի տեսածէս ետքը ։ Եւ
տեսիլքի մէջ տեսայ . ու եղաւ որ
տեսած ատենս , ես Եղամի գաւա-
ռին մէջը եղող Շուշան մայրա-
քաղաքն էի , ու տեսիլքի մէջ
տեսայ որ՝ Ուլայ գետին քովն էի ։
3 Եւ իմ աչքերս վերցուցի ու տե-
սայ , և ահա գետին քովը խոյ մը
կայնած էր , ու անիկայ երկու եղ-

Ն․ Ք․ Գ․ Բ․ Իբր 555

Իբր 553

Ն. Ք. Դ. Բ.
Իբր 553

ջիւր ունէր , և ան եղջիւրները
բարձր էին , ու մէկը մէկալէն
բարձր էր , ու ան բարձրը ետքէն
4 ելաւ ։ Եւ տեսայ այն խոյը՝ որ իր
եղջիւրներովը դէպ 'ի արեւմուտք ,
դէպ 'ի հիւսիս , ու դէպ 'ի հարաւ
կը զարնէր , ու բնաւ մէկ գազան մը
անոր առջեւը չէր կրնար կայնիլ ,
և անոր ձեռքէն ազատող չկար .
ու հաճոյ անիկայ իր ուզածին պէս
ըրաւ , ու մեծցաւ ։
5 Ու երբոր ես կը մտածէի , ահա
արեւմուտքէն բոլոր երկրի երեսին
վրայ այծերու քօշ մը եկաւ , ու
գետնին չէր դպչէր . ու քօշը իր
աչքերուն մէջտեղը մէկ նշանաւոր
6 եղջիւր մը ունէր ։ Եւ անիկայ
հասաւ մինչև երկու եղջիւր ունե-
ցող խոյը , որն որ տեսայ որ գե-
տին քովը կայնած էր , ու իր կա-
տաղի զօրութեամբը անոր վրայ
7 յարձակեցաւ ։ Եւ տեսայ որ
խոյին մօտեցաւ , ու անոր վրայ
կատղելով՝ խոյը զարկաւ , և անոր
երկու եղջիւրը կոտրեց . ու խոյը
ոյժ չունէր որ անոր առջեւը կայնի .
ու զանիկայ գետինը զարկաւ , ու
զանիկայ կոխկռտեց . և մէկը չկար
որ խոյը անոր ձեռքէն ազատէ ։
8 Ու այծերու քօշը խիստ մեծցաւ .
ու անիկայ ուժովցածին պէս՝ ան
մեծ եղջիւրը կոտրեցաւ , և անոր
տեղը՝ դէպ 'ի երկինքին չորս հովե-
րը՝ չորս նշանաւոր եղջիւրներ ելան ։
9 Ու անոնց մէկէն պզտիկ եղջիւր մը
ելաւ . և անիկայ դէպ 'ի հարաւ ,
դէպ 'ի արեւելք ու դէպ 'ի Շփա-
10 ռաւոր երկիրը խիստ մեծցաւ ։ Ու
մինչև երկնից զօրքը մեծցաւ , և
զօրքէն , ու աստղերէն գետինը
ձգեց , ու զանոնք կոխկռտեց ։
11 Ու մինչև զօրաց Իշխանը զինքը
բարձրացուց . ու անկէ մշտնջե-
նաւոր զոհը վերցուեցաւ , և անոր
սրբարանին բնակարանը կործանե-
12 ցաւ ։ Ու զօրք մը ամբարշտու-
թեամբ մշտնջենաւոր զոհին դէմ
դրուեցաւ , ու ճշմարտութիւնը գե-
տինը զարկաւ , ու դրան տեսաւ ,
13 և յաջողեցաւ ։ Ու լսեցի որ մէկ
սուրբ մը կը խօսէր . և ան խօսողին
մէկ ուրիշ սուրբ մը ըսաւ . Մըշ-
տընջենաւոր զոհին , ու աւրող ամ-
բարշտութեանը , ու սրբարանին ,
և զօրքին կոխուելու տրուելուն տե-
14 սիլքը մինչև ե՞րբ պիտի ըլլայ ։ Ու
անիկայ ինծի ըսաւ . Մինչև երկու
հազար իրեք հարիւր օր . ետքը
սրբարանը պիտի մաքրուի ։
15 Ու երբոր ես Դանիէլս տեսիլքը
տեսայ , ու անոր իմաստը կը փըն-
տըռէի որ հասկընամ , ահա իմ դի-
մացս մարդու կերպարանքով մէկը
16 կը կայնէր ։ Եւ Ուլայ գետին մէ-
ջէն մարդու ձայն լսեցի , որ կը
կանչէր ու կ'ըսէր . Ով Գաբրիէլ՝
17 տեսիլքը ատոր հասկըցուր ։ Ու
անիկայ իմ կեցած տեղիս մօտ ե-
կաւ . ու երբոր եկաւ , վախցայ ,
ու երեսիս վրայ ինկայ . և անիկայ
ինծի ըսաւ . Հասկըցիր՝ որդի մար-
դոյ , որ աս տեսիլքը վերջին ժա-
18 մանակին համար է ։ Ու երբոր
անիկայ ինծի հետ կը խօսէր , ես
թմրած՝ երեսիս վրայ գետինը ին-
կած էի . և անիկայ ինծի դպաւ ,
ու զիս իմ կեցած տեղս կայնե-
19 ցուց . Ու ըսաւ . Ահա քեզի կ'ի-
մացընեմ բարկութեան վերջը ինչ
ըլլալիքը . Վասն զի աս տեսիլքը
վերջի ժամանակին համար է ։
20 Ան քու տեսած խոյդ՝ որ երկու
եղջիւր ունէր , Մարաց ու Պարսից
21 թագաւորներն է ։ Եւ այծերու
քօշը՝ Յունաց թագաւորն է . ու
անոր աչքերուն մէջտեղի մեծ եղ-
ջիւրը՝ առաջին թագաւորն է ։
22 Եւ ան որ կոտրեցաւ , ու անոր
տեղը չորսը ելաւ , ան է որ՝ ան
ազգէն չորս թագաւորութիւն պի-
տի ելլէ , բայց ոչ թէ անոր զօ-
23 րութեամբը ։ Ու անոնց թագա-
ւորութեանը վերջը՝ երբոր ամբա-
րիշտները իրենց ամբարշտութիւնը
լեցընեն , մէկ երեսը լիրբ ու
խորագէտ թագաւոր մը պիտի
24 ելլէ . Եւ անոր իշխանութիւնը
պիտի զօրանայ , բայց ոչ թէ իր
զօրութեամբը . ու անիկայ սքան-
չելի կերպով պիտի աւրէ . և պի-
տի յաջողի , ու բան պիտի տենէ ,
ու զօրաւորները , և սրբոց ժողո-
25 վուրդը պիտի աւրէ . Ու իր խել-
քին միջոցովը՝ իր ձեռքին մէջ նեն-
գութիւնը պիտի յաջողի , և իր
սրտին մէջ պիտի հպարտանայ , ու
խաղաղութեան մէջ շատերը պի-
տի կորսընցընէ , և իշխանաց Իշ-
խանին դէմ պիտի ելնէ . բայց ա-
26 ռանց ձեռքի պիտի կոտրի ։ Եւ
իրիկուան ու առտուան տեսիլ-
քը՝ որ ըսուեցաւ , ճշմարիտ է . դու
դուն տեսիլքը գոցէ . քանզի շատ
օրերու համար է ։
27 Ու ես Դանիէլս մարեցայ , և
քանի մը օր հիւանդացայ . ետքը
ելայ թագաւորին գործը տեսայ .
ու տեսիլքին համար զարմացման
մէջ էի . ու մէկը չկար որ ինծի
հասկըցընէր ։

ԳԼ. Թ

1 Դանիէլ գերութեան ժամանակին վրայ խոր-
հելով , 3 մեղաց խոստովանութիւն մը կ'ընէ ,
16 ու աղօթքով կը խնդրէ որ Երուսաղէմ նո-
րոգուի ։ 20 Գաբրիէլ կ'իմացընէ անոր՝ եօ-
թանասուն շաբաթներուն վրայով ։

Ն. Ք. Դ. Բ.
Իբր 553

Գլ. Ժ. 19 ։ ԺԱ. 3 , 16 ։
Հմր 21 ։
Գլ. Է. 6 ։ ԺԱ. 4 ։ Հմր 22 ։
Գլ. Է. 8 ։ ԺԱ. 21 ։
Գլ. ԺԱ. 25 ։
Սաղ. ԽԸ. 2 ։ Եզկ. Ի. 6 , 15 ։ Գլ. ԺԱ. 16 , 41 , 45 ։
Ես. ԺԴ. 13 ։
Գլ. ԺԱ. 25 ։
Յայտ. ԺԲ. 4 ։
Յես. Ե. 14 ։
Երեմ. ԽԲ. 26 , 42 ։ Գլ. ԺԱ. 36 ։ Հմր 25 ։
Գլ. ԺԱ. 31 ։ ԺԲ. 11 ։
Եւ. ԻԹ. 33 ։ Թուոց ԻԸ. 3 ։ Եզեկ. ԽԶ. 13 ։
Գլ. ԺԱ. 31 ։
* Կամ՝ ամբարշտութեան համար՝ մշտնջենաւոր զոհին դէմ իրեն զօրք տրուեցաւ ։
Սաղ. ՃԺԹ. 43 , 142 ։ Ես. ԾԹ. 14 ։
Հմր 4 ։ Գլ. ԺԱ. 28 , 36 ։
Գլ. Դ. 13 ։ ԺԲ. 6 ։ Ա Պետ. Ա. 12 ։
Եբր. իրիկուն առաւօտ ։
Տես Գլ. ԺԲ. 8 ։ Ա Պետ. Ա. 10 , 11 ։
Եզեկ. Ա. 26 ։

Գլ. ԺԲ. 6 , 7 ։
Գլ. Թ. 21 ։ Ղուկ. Ա. 19 , 26 ։
Եզեկ. Ա. 28 ։ Յայտ. Ա. 17 ։
Գլ. Ժ. 9 , 10 ։ Ղուկ. Թ. 32 ։
Եզեկ. Բ. 2 ։
Գլ. Թ. 27 ։ ԺԱ. 27 , 35 , 36 ։ ԺԲ. 7 ։ Ամբ. Բ. 3 ։
Հմր 3 ։
Հմր 5 ։
Կամ՝ մազոտ
Գլ. ԺԱ. 3 ։
Հմր 8 ։ Գլ. ԺԱ. 4 ։
Բ Օր. ԻԸ. 50 ։
Հմր 6 ։
Յայտ. ԺԷ. 13 , 17 ։
Հմր 12 ։ Գլ. ԺԱ. 36 ։
Հմր 10 ։ Գլ. Է. 25 ։
Գլ. ԺԱ. 21 , 23 , 24 ։
Հմր 11 ։ Գլ. ԺԱ. 36 ։
Հմր 11 ։ Գլ. ԺԱ. 36 ։
Յոբ. ԼԴ. 20 ։ Ողբ. Դ. 6 ։ Գլ. Բ. 34 , 45 ։
Գլ. Ժ. 1 ։
Եզեկ. ԺԲ. 27 ։ Գլ. Ժ. 14 ։ ԺԲ. 4 , 9 ։ Տես Յայտ. ԻԲ. 10 ։
Գլ. Է. 28 ։ Ժ. 8 , 16 ։
Գլ. Զ. 2 , 3 ։
Տես Հմր 16 ։
Կամ՝ ոչ ոք իմանար ։

1 Ասուերոսի որդւոյն Դարեհին
առջի տարին՝ որ անիկայ Մա-
րաց սերունդէն էր, ու Քաղդէա-
ցւոց թագաւորութեանը վրայ թա-
2 գաւոր դրուեցաւ, Անոր թագա-
ւորութեանը առջի տարին՝ ես Դա-
նիէլս գիրքերէն իմացայ ան տա-
րիներուն թիւը՝ որոնց համար Տէ-
րոջը խօսքը եղեր էր Երեմիա
մարգարէին, թէ եօթանասուն
տարիով պիտի վերջացընէր Երու-
սաղէմի աւերումները։
3 Ու ես իմ երեսս Տէր Աստուծոյ
դարձուցի, որ ծոմապահու-
թեամբ, քուրձով ու մոխիրով ա-
ղօթք ու աղաչանք մատուցանեմ.
4 Եւ իմ Տէր Աստուծոյս աղօթք ը-
րի, խոստովանեցայ, ու ըսի. Ո՛հ
Տէ՛ր՝ մեծ և ահաւոր Աստուած,
որ քեզ սիրողներուն և քու պա-
տուիրանքներդ պահողներուն ուխտ
ու ողորմութիւն կը պահես.
5 Մենք մեղք գործեցինք, անօրէ-
նութիւն ըրինք, ու ամբարշտու-
թիւն ըրինք, և ապստամբ եղանք,
ու քու պատուիրանքներէդ ու ի-
6 րաւունքներէդ խոտորեցանք. Եւ
քու ծառաներուդ՝ մարգարէներուն
մտիկ չըրինք, որոնք մեր թագա-
ւորներուն, մեր իշխաններուն, ու
մեր հայրերուն, ու երկրին բոլոր
ժողովրդեանը՝ քու անունովդ խօ-
7 սեցան։ Ո՛վ Տէր՝ քեզի կը վայլէ
արդարութիւնը, ու մեզի՝ երեսի
ամօթը, (ինչպէս որ այսօր է-
ղաւ,) Յուդայի մարդիկներուն,
Երուսաղէմի բնակիչներուն, ու
ամէն մերձաւոր ու հեռաւոր Իս-
րայէլացիներուն՝ ան բոլոր երկիր-
ներուն մէջ՝ ուր որ դուն զանոնք
քշեցիր, անոնց քեզի դէմ ըրած
8 յանցանքին համար։ Ո՛վ Տէր՝
երեսի ամօթ կը վայլէ մեզի, մեր
թագաւորներուն, մեր իշխաննե-
րուն ու մեր հայրերուն, ինչու որ
9 քեզի դէմ մեղք գործեցինք. Իսկ
ողորմութիւնը ու ներողութիւնը
մեր Տէր Աստուծոյն կը վայլէ.
վասն զի մենք անկէ ապստամբե-
10 ցանք, Եւ մեր Տէր Աստուծոյն
ձայնին մտիկ չըրինք որ անոր օ-
րէնքներովը քալենք, որոնք իր ծա-
ռաներուն՝ մարգարէներուն ձեռ-
11 քովը մեր առջեւը դրաւ։ Ու բոլոր
Իսրայէլը քու օրէնքդ զանց ըրին,
և քու ձայնիդ մտիկ չընելով խո-
տորեցան. ուստի Աստուծոյ ծա-
ռային Մովսէսին օրինացը մէջ
գրուած անէծքը ու երդումը մեր
վրայ թափեցաւ. քանզի Անոր դէմ
12 մեղք գործեցինք. Ու մեր վրայ մեծ
չարիք բերելով՝ հաստատեց իր
խօսքերը՝ որ մեր վրայով, ու մեզ
դատող մեր դատաւորներուն վրա-
յով խօսեր էր. անանկ որ Երու-
սաղէմի մէջ եղածին պէս՝ բոլոր
13 երկինքին տակը չեղաւ։ Մովսէ-
սին օրինացը մէջ գրուածին պէս՝
աս բոլոր չարիքը մեր վրայ եկաւ.
սակայն մենք մեր անօրէնութիւն-
ներէն դառնալու, և քու ճշմար-
տութեանդ խելամուտ ըլլալու հա-
մար՝ մեր Տէր Աստուծոյն երեսը
14 չաղաչեցինք։ Եւ Տէրը աս չա-
րիքիս համար հսկելով՝ զանիկայ
մեր վրայ բերաւ. քանզի մեր Տէր
Աստուածը իր ըրած բոլոր գործ-
քերուն մէջ արդար է. բայց մենք
15 անոր ձայնին մտիկ չըրինք։ Եւ
արդ՝ ո՛վ Տէր Աստուած մեր՝ որ
քու ժողովուրդդ զօրաւոր ձեռքով
Եգիպտոսի երկրէն հանեցիր, ու
քեզի անուն վաստըկեցար՝ ինչպէս
որ այսօր կ՚երեւնայ, մենք մեղք
գործեցինք, ամբարշտութիւն ը-
16 րինք։ Ո՛վ Տէր՝ քու բոլոր *բա-
րութեանդ համեմատ շնորհք ըրէ.
քու սուրբ լեռնէդ՝ Երուսաղէմ
քաղաքէն քու սրտմտութիւնդ ու
բարկութիւնդ դառնայ. վասն զի
մեր մեղքերուն համար, ու մեր
հարցը անօրէնութիւններուն հա-
մար՝ Երուսաղէմը, ու քու ժողո-
վուրդդ՝ ամէն մեր բոլորտիքը ե-
17 ղողներուն նախատինք եղան։ Եւ
հիմա ո՛վ Աստուած մեր՝ քու ծա-
ռայիդ աղօթքը ու աղաչանքը լսէ,
ու Տէրոջը համար՝ քու ամայա-
ցած սրբարանիդ վրայ երեսդ փայ-
18 լեցուր։ Ականջդ խոնարհեցուր՝
ո՛վ Աստուած իմ, ու լսէ՛, աչքերդ
բա՛ց, ու տե՛ս մեր աւերումները,
և ան քաղաքը՝ որուն վրայ քու
անունդ կոչուած է. վասն զի մեր
աղաչանքը չէ՛ թէ մեր արդարու-
թիւններուն համար քու առջեւդ
կը մատուցանենք. հապա քու մեծ
19 ողորմութեանդ համար։ Ո՛վ Տէր՝
լսէ՛, ո՛վ Տէր՝ ներէ՛, ո՛վ Տէր՝ մտիկ
ըրէ, ու կատարէ՛. մի՛ ուշանար
քեզի համար՝ ո՛վ Աստուած իմ.
քանզի քու քաղաքիդ վրայ, ու
քու ժողովրդեանդ վրայ քու ա-
նունդ կոչուած է։
20 Ու երբոր ես տակաւին կը խօ-
սէի, կ՚աղօթէի, և իմ մեղքս, ու
իմ ժողովուրդիս Իսրայէլին մեղքը
կը խոստովանէի, և իմ Աստուծոյս
սուրբ լեռանը համար՝ իմ աղա-
չանքս իմ Տէր Աստուծոյս առջեւը
21 կը մատուցանէի. Երբոր ես տա-
կաւին աղօթքի մէջ կը խօսէի,
ահա ան առջի տեսիլքին մէջը տե-
սած մարդս Գաբրիէլը՝ շուտ մը
թռչելով՝ ինծի դպաւ իրիկուան
22 զոհին ատենը, Ու ինծի հասկըցը-

Ն. Ք. ԱՌ. Ք.
Իրր 538
ֆ Դն. Ժ. 12։
– Դն. Ժ. 11, 19։
բ Մատ. իդ. 15։
ք Եզ. Ծգ. 10։
տ Եզ. Ծգ. 11։ Երեմ. իգ. 5, 6։ Եբր. Թ. 12։ Յայտ. Ժդ. 6։
ի Սաղ. խե. 7։ Ղու. ա. 35։ Յով. ա. 41։ Եբր. Թ. 11։
ղ Տես Թուռ. Ժգ. 34։ Եզեկ. դ. 6։
ի Հմր 23։ Մատ. իդ. 15։
ը Եզր. դ. 24։ զ. 1, 15։ է. 1։ Նեեմ. բ. 1, 3, 5, 6, 8։
ր Յով. ա. 41։ դ. 25։
* Եբր. Մեսիա
ծ Եզ. Ծե. 4։
յ Նեեմ. գ. 8, 16, 17, 18։
ւ Եզ. Ծգ. 8։ Մար. Թ. 11։ Ղու. իդ. 26, 46։
խ ա Պետ. բ. 21։ գ. 18։
ծ Մատ. իբ. 7։
կ Ղու. ԺԹ. 44։
հ Մատ. իդ. 2։
յ Մատ. իդ. 6, 14։
Իրր 534
ղ Եզ. ը. 7, 8։ Դն. Ժա. 10, 22։ Նաւ. ա. 8։
ճ Եզ. Ծգ. 11։ Մատ. իղ. 23։ Հռով. ե. 15, 19։ Եբր. Թ. 28։
մ Եզ. խբ. 6։ Ծե. 3։ Երեմ. լա. 31։ Եզեկ. Ժզ. 60, 61, 62։

նելով՝ ինծի հետ խօսեցաւ, ու
ըսաւ. Ո՛վ Դանիէլ՝ հիմա ելայ,
որ քեզի իմաստութիւն սորվեցը-
23 նեմ ։ Քու աղաչանքիդ սկիզբը՝
պատգամ ելաւ, ու ֆես եկայ որ
պատմեմ. –վասն զի դուն Աս-
տուծոյ սիրելի ես. ուրեմն բպատ-
գամը մտիկ ըրէ, ու տեսիլքը հաս-
24 կըցիր ։ Ցանցանքը վերջացընելու,
ու մեղքը հատցընելու, քև ան-
օրէնութիւնը քաւելու, տուլաւի-
տենական արդարութիւնը բերելու,
և տեսիլքը ու մարգարէութիւ-
նը կնքելու, ու ի սրբոց Սուրբը
օծելու համար՝ քու ժողովուրդիդ
վրայ ու սուրբ քաղաքիդ վրայ՝
ղեօթանասուն եօթնեակ որո-
25 շուած է ։ Եւ ի գիտցիր ու հասկը-
ցիր, որ ըԵրուսաղէմը նորէն շինե-
լու հրամանը ելլելէն՝ մինչև ր*Օ-
ծեալ ծիշխանը եօթը եօթնեակ, ու
վաթսունուերկու եօթնեակ կայ.
և նորէն հրապարակը ու ի պարիս-
պը պիտի շինուի նեղութեան ժա-
26 մանակներու մէջ ։ Եւ վաթսուն-
ուերկու եօթնեակէն ետքը ւՕ-
ծեալը պիտի կտրուի. ի բայց չէ՛
թէ իրեն համար. ու ծդալու իշ-
խանին ժողովուրդը՝ կքաղաքը հու
սրբարանը պիտի աւրէ. յև վերջը
ղհեղեղով պիտի ըլլայ. ու մինչև
պատերազմին վերջը աւերումներ
27 սահմանուած են ։ Ու մէկ եօթ-
նեակ մը՝ ճշատերուն հետ մուխտ
պիտի հաստատէ, և եօթնեկին
մէջտեղը զոհը ու պատարագը պի-
տի դադրեցընէ. ու †աւրողը՝
ոպղծութեանց աշտարակին վրայ
պիտի ըլլայ", մինչև որ աւրուածին
վրայ նախասահմանեալ կորուս-
տը թափուի ։

ԳԼ. Ժ

1 Դանիէլ իր անձը խոնարհեցընելէն ետև տեսիլք մը կը տեսնէ. 10 երբոր կը զարհուրի, հրեշտակը զանիկայ կը մխիթարէ ։

1 Պարսից Կիւրոս թագաւորին եր-
րորդ տարին՝ խօսք մը յայտ-
նուեցաւ Դանիէլին, –որուն անու-
նը Բաղտասասար կոչուած էր. բու
ան խօսքը ճշմարիտ էր, ու ‡մեծ
տառապանաց վրայով էր". ու գա-
նիկայ խօսքը հասկըցաւ, ու տեսիլ-
2 քին տեղեակ եղաւ ։ Ան օրերը ես
Դանիէլս՝ լման իրեք շաբաթ սու-
3 գի մէջ էի. Աիտրժելի կերակուր
չկերայ, ու բերանս միս կամ գինի
չմտաւ. տու ամենևին իւղով չօ-
ծուեցայ, մինչև որ երեք շաբաթը
լմընցաւ ։
4 Եւ առաջին ամսուն քսանուչորս-
երորդ օրը՝ ես ի Տիգրիս կոչուած
5 մեծ գետին եզերքն էի. Ու ղաչ-
քերս վերցուցի ու նայեցայ, և ի ա-
հա կտաւ հագած, ու մէջքը ըՈ-
փազի ոսկիէ րգօտի կապած մարդ
6 մը կար. Եւ անոր մարմինը ծոսկե-
քարի պէս, ու երեսը ի փայլակի ե-
րևոյթի պէս, ւև աչքերը կրակի
բոցերու պէս, ու թևերը ի ու ոտ-
քերը փայլուն պղնձի գոյնին պէս,
ծև իր խօսքերուն ձայնը բազմու-
7 թեան ձայնին պէս էր ։ Ու աս
տեսիլքը՝ կմինակ ես Դանիէլս տե-
սայ, ու ինծի հետ եղող մարդիկ-
ները տեսիլքը չտեսան. հապա ա-
նոնց վրայ մեծ վախ ինկաւ, ու
8 փախան որ պահուըտին ։ Եւ ես
մինակ մնացի, ու աս մեծ տեսիլքը
տեսայ, հու իմ վրաս ոյժ չմնաց,
և իմ յվայելչութիւնս ապակա-
նութեան դարձաւ, ու ալ ոյժ
9 չունեցայ ։ Եւ անոր խօսքերուն
ձայնը լսեցի, ղու անոր խօսքերուն
ձայնը լսածիս պէս՝ ապշած երեսիս
վրայ գետինը ինկայ ։
10 ճԵւ ահա ինծի մէկ ձեռք մը դըպ-
աւ, ու զիս ծունկերուս, ու ձեռ-
քերուս թաթերուն վրայ վերցուց.
11 Եւ ինծի ըսաւ. Ո՛վ Դանիէլ՝ մսի-
րելի մարդ, քեզի ըսելու խօսքերս
հասկըցիր, ու եղած տեղդ կայնէ՛.
քանզի հիմա քեզի խրկուեցայ. ու
երբոր անիկայ աս խօսքը ինծի ը-
12 սաւ, դողալով կայնեցայ ։ Եւ
ինծի ըսաւ. յՄի՛ վախնար, ո՛վ
Դանիէլ. քանզի ան առջի օրէն 'ի
վեր՝ որ քու սիրտդ տուիր հասկը-
նալու, և քու Աստուծոյդ առջևը
քու անձդ խոնարհեցընելու, նքու
խօսքերդ լսուեցան. ու ես քու
13 խօսքերուդ համար եկայ ։ ղԲայց
Պարսից թագաւորութեանը իշ-
խանը քսանումէկ օր իմ երեսիս
դէմ կեցաւ. սակայն ահա "Մի-
քայէլ՝ առաջին իշխաններէն մէկը՝
ինծի օգնութեան եկաւ. ու ես
հոն Պարսից թագաւորներուն քո-
14 վը մնացի. Ու հիմա եկայ, որ ղետ-
քի օրերը քու ժողովուրդիդ ինչ
ըլլալիքը քեզի հասկըցընեմ. ղվասն
զի տեսիլքը գալու օրերուն համար
15 է ։ Եւ անիկայ ինծի ասանկ խօս-
քեր ըսածին պէս, ջերեսս դէպ 'ի
գետինը ծռեցի, ու համր մնացի ։
16 Եւ ահա –մարդու որդւոց կեր-
պարանքով մէկը "շրթունքներուս
դպաւ. ու բերանս բացի, ու խօսե-
ցայ. ու դիմացս կայնողին ըսի. Ո՛վ
տէր իմ՝ աս տեսիլքով ցաւերս

Ն. Ք. ԱՌ. Ք.
Իրր 534
տ Տես Մատ. զ. 17։
ի Ծն. բ. 14։
ղ Տես Ցես. ե. 13։
ի Դն. Ժբ. 6, 7։
ը Երեմ. Ժ. 9։
ր Յայտ. ա. 13, 14, 15։ Ժե. 6։
ծ Եզեկ. ա. 16։
ի Եզեկ. ա. 14։
ւ Յայտ. ա. 14։ ԺԹ. 12։
ի Եզեկ. ա. 7։ Յայտ. ա. 15։
ծ Եզեկ. ա. 24։ Յայտ. ա. 15։
կ Տես Գործ. Թ. 7։
հ Դն. ը. 27։
յ Դն. է. 28։
ղ Դն. ը. 18։
ճ Երեմ. ա. 9։ Դն. Թ. 21։ Յայտ. ա. 17։
մ Դն. Թ. 23։
յ Յայտ. ա. 17։
ն Դն. Թ. 3, 4, 22, 23։ Գործ. Ժ. 4։
ղ Հմր 20։
" Հմր 21։ Դն. Ժբ. 1։ Յուդ. 9։ Յայտ. Ժբ. 7։
ղ Ծն. խԹ. 1։ Դն. ր. 28։
ղ Դն. ր. 26։ Ամբ. բ. 3։
ջ Հմր 9։ Դն. ը. 18։
– Դն. ը. 15։
" Հմր 10։ Երեմ. ա. 9։
կ Հմր 8։

† Կամ՝ աւրող պղծութիւնը աշտարակին վրայ պիտի ըլլայ. Կամ՝ պղծութեանց թևին վրայ աւրողը պիտի գայ. յ Մատ. իդ. 15։ Մար. Ժգ. 14։ Ղու. իա. 20։ ն Տես Եզ. Ժ. 22, 23։ իը. 22։ Դն. Ժա. 36։ Ղու. իա. 24։ —— – Դն. ա. 7։ բ Դն. ը. 36։ Յայտ. ԺԹ. 9։ ‡ Եբր. զօրքը մեծ էր. կամ՝ պատերազմը մեծ էր. ֆ Դն. ա. 17։ ը. 16։

Ն. Ք. ԳՔ. Ւ534

վրաս դարձան, և ալ ոյժ չունեցայ ։
17 Ու աս իմ տիրոջս ծառան՝ աս իմ
տիրոջս հետ ի՞նչպէս խօսելու կա-
րող ըլլայ. վասն զի հիմակուընէ
վրաս ոյժ չկայ, ու վրաս շունչ
18 չմնաց ։ Եւ ան մարդու կերպա-
րանք ունեցողը՝ նորէն ինծի դպաւ,
19 և զիս ուժովցուց. ᵃՈւ ըսաւ.
ᵇՄի՛ վախնար՝ ո՛վ սիրելի մարդ,
խաղաղութիւն ըլլայ քեզի. ու-
ժովցի՛ր, և քաջ եղի՛ր. ու երբոր
անիկայ ինծի հետ խօսեցաւ, ու-
ժովցայ, ու ըսի. Թող խօսի իմ
տէրս. վասն զի ուժովցուցիր զիս ։
20 Եւ անիկայ ըսաւ. Գիտե՞ս թէ
ինչու համար քեզի եկայ. ու հիմա
ᶜՊարսից իշխանին դէմ պատերազ-
մելու պիտի դառնամ. ու ելլելուս
պէս, ահա Յունաց իշխանը պիտի
21 գայ ։ Բայց ես ճշմարտութեան
գիրքին մէջը գրուածը քեզի պիտի
պատմեմ. ու ասոնց *մէջ մէկը
չկայ որ ինծի օգնէ, ᵈբայց միայն
ձեր իշխանը Միքայէլ ։

ᵃ Հմր 11 ։
ᵇ Դատ. Զ. 23 ։
ᶜ Հմր 13 ։
* Կամ՝ դէմ
ᵈ Հմր 13 ։ Յուդ. 9 ։ Յայտ. ԺԲ. 7 ։

## ԳԼ. ԺԱ

1 Պարսից կործանումը Յունաց թագաւորին ձեռքովը ։ 5 Հարաւի և հիւսիսի թագաւորներուն մէջտեղը եղած դաշնակցութիւնները ու պատերազմները ։ 30 Հոռվմէացւոց յարձակումը ու բռնաւորութիւնը ։

1 Ու ᵃՄարաց Դարեհ թագաւորին
ᵇառջի տարին՝ ես կայնեցայ որ
զանիկայ ուժովցընեմ ու զօրացը-
2 նեմ ։ Եւ հիմա քեզի ճշմարտու-
թիւն պիտի պատմեմ. Ահա Պար-
սից երկրին մէջ իրեք թագաւոր ալ
պիտի ելլէ. ու չորրորդը մեծ հա-
րստութիւնով՝ ամենէն հարուստ
պիտի ըլլայ, ու երբոր իր հարստու-
թիւնովը ուժովնայ, ամէնը ոտք
պիտի հանէ Յունաց թագաւորու-
թեանը դէմ ։
3 Ետքը ᶜմէկ զօրաւոր թագաւոր
մը պիտի ելլէ, ու մեծ իշխանու-
թիւնով պիտի տիրէ, և ᵈիր կա-
4 մացը պէս պիտի ընէ. Ու ելլելուն
պէս՝ ᵉանոր թագաւորութիւնը
պիտի կոտրի, ու երկինքին չորս
հովերուն պիտի բաժնուի. բայց իր
յաջորդներուն չէ, ոչ ալ իր վա-
րած իշխանութեանը պէս. վասն
զի անոր թագաւորութիւնը պիտի
քակուի, ու անոնցմէ ուրիշներուն
պիտի ըլլայ ։
5 Եւ հարաւի թագաւորը պիտի
ուժովնայ, ու անոր իշխաններէն
մէկը անոր վրայ պիտի ուժովնայ,
ու պիտի տիրէ. անոր իշխանու-
թիւնը՝ մեծ իշխանութիւն պիտի
6 ըլլայ ։ Եւ մէկ քանի տարիէն ետ-
քը՝ իրարու հետ դաշնակցութիւն
պիտի ընեն. վասն զի հարաւի թա-

ᵃ Գլ. Ե. 31 ։
ᵇ Գլ. Թ. 1 ։
ᶜ Գլ. Է. 6 ։ Ը. 5 ։
ᵈ Գլ. Ը. 4 ։ Հմր 16. 36 ։
ᵉ Գլ. Ը. 8 ։
Գլ. Ը. 22 ։

գաւորին աղջիկը՝ հիւսիսի թագա-
ւորին պիտի մտնէ հաշտութիւն
ընելու համար, բայց բազուկի ոյժ
պիտի չունենայ. և ան թագաւորը
ու անոր բազուկը պիտի չկարենայ
դիմանալ. հապա ան աղջիկը՝ ու
զանիկայ բերողները, ու զանիկայ
ծնանողը, և զանիկայ ժամանակ-
ներուն համեմատ ուժովցընողը
ձեռք պիտի տրուի ։
7 Բայց անոր արմատներուն ըն-
ձիւղներէն մէկը պիտի ելլէ անոր
տեղը, ու անիկայ զօրքով պիտի
գայ, և հիւսիսի թագաւորին ամ-
րոցները պիտի մտնէ, ու անոնց
մէջը բան պիտի տեսնէ, ու յաղ-
8 թող պիտի ըլլայ. Եւ անոնց աս-
տուածներն ալ՝ ձուլածոյ կուռքե-
րուն ու ոսկեղէն ու արծաթեղէն
ընտիր ամաններուն հետ՝ Եգիպտոս
գերութեան պիտի տանի. ու անի-
կայ †հիւսիսի թագաւորէն աւելի
9 շատ տարիներ պիտի կայնի". Որ
հարաւի թագաւորին թագաւորու-
թեանը մէջ պիտի մտնէ, ու նորէն
իր երկիրը պիտի դառնայ ։
10 Եւ անոր որդիքը պատերազմի
պիտի ելլեն, ու շատ զօրքերու
բազմութիւն պիտի ժողվեն. մէկն
ալ անպատճառ պիտի գայ, ᵃու
հեղեղի պէս պիտի անցնի, և դար-
ձեալ ᵇմինչև անոր ամրոցը պիտի
11 պատերազմի ։ Իսկ հարաւի թա-
գաւորը պիտի կատղի, ու պիտի
ելլէ, և անոր հետ՝ այսինքն հիւսիսի
թագաւորին հետ պատերազմ պի-
տի ընէ. ան ալ շատ բազմութիւն
ոտք պիտի հանէ. բայց բազմու-
թիւնը անոր ձեռքը պիտի տրուի ։
12 Ու երբոր ան բազմութիւնը առնէ,
իր սիրտը պիտի բարձրանայ, ու
բիւրաւորներ պիտի կործանէ, բայց
13 պիտի չուժովնայ. Քանզի հիւսիսի
թագաւորը պիտի դառնայ, ու առ-
ջինէն աւելի բազմութիւն ոտք պի-
տի հանէ, ու մէկ քանի տարիէն ետ-
քը՝ մեծ զօրքով, ու մեծ պատրաս-
տութեամբ անշուշտ պիտի գայ ։
14 Եւ ան ժամանակները հարաւի թա-
գաւորին վրայ շատերը պիտի ելլեն.
ու քու ժողովուրդիդ բռնաւորնե-
րուն որդիքը ոտք պիտի ելլեն՝ տե-
սիլքը կատարելու համար, բայց
15 պիտի գլորին ։ Եւ հիւսիսի թա-
գաւորը պիտի գայ, ու հողաբլուր-
ներ պիտի կանգնէ, ու պարսպաւոր
քաղաքներ պիտի առնէ. և հարաւի
թագաւորին բազուկները, ու անոր
ընտրեալները պիտի չդիմանան, ոչ
ալ դիմանալու ոյժ պիտի ունենան ։
16 Եւ անոր վրայ եկողը՝ ᶜիր ուզածին
պէս պիտի ընէ. ու ᵈանոր երեսին
դէմ դնող պիտի չըլլայ. և ᵉփա-

Ն. Ք. ԳՔ. Ւ534

† Կամ՝ մէկ քանի տարի հիւսիսի թագաւորին աւելի պիտի ուժովնայ.

ᵃ Ես. Ը. 8 ։ Գլ. Թ. 26 ։
ᵇ Հմր 7 ։
ᶜ Գլ. Ը. 4. 7 ։ Հմր 3. 36 ։
ᵈ Յես. Ա. 5 ։
ᵉ Գլ. Ը. 9 ։ Հմր 41. 45 ։

Ն . ք . ղ . ք . իբր 534

ռաւոր երկրին մէջը պիտի կենայ ,
17 որ անոր ձեռքովը պիտի աւրի ։ Ու
երեսը պիտի շիտկէ իր բոլոր Թա-
գաւորութեանը ուժովը գալու . և
իր հետը ուղիղներ պիտի ըլլան , ու
բան պիտի տեսնէ . և կանանց աղ-
ջիկը անոր պիտի տայ , որ անոր
Թագաւորութիւնը աւրէ . բայց ա-
նիկայ անոր հետ պիտի չկայնի , ու
18 անոր պիտի չըլլայ ։ Ետքը իր երե-
սը դէպ 'ի կղզիները պիտի դարձը-
նէ , ու շատերը պիտի առնէ . և
մէկ իշխան մը անոր նախատինքը
պիտի դադրեցընէ , ու ասկէ 'ի զատ
անոր նախատինքը վրան պիտի
19 դարձընէ ։ Եւ իր երեսը դէպ 'ի իր
երկրին ամրոցները պիտի դարձընէ ,
բայց պիտի գլորի , պիտի իյնայ
ւ ու պիտի չգտնուի ։

ւ Յոբ . ի . 8 ։ Սաղ . լէ . 36 ։ Եզկ . իզ . 21 ։
* Կամ՝ փառաւոր մասէն .

20 Եւ անոր տեղը մէկը պիտի ելլէ ,
որ հարկապահանջը պիտի խրկէ իր
Թագաւորութեանը *փառքին հա-
մար" . բայց անիկայ քիչ օրերու
մէջ պիտի կոտրի . սակայն ո՛չ
բարկութեամբ , և ո՛չ պատերազ-
մով ։

ե Գլ . է . 8 ։ ը . 9 , 23 , 25 ։

21 Ու անոր տեղը ե մէկ անարգ մը
պիտի ելլէ , որ անոր Թագաւորա-
կան պատիւ պիտի չտան . բայց
անիկայ հանդարտութեամբ պիտի
գայ , ու շողոքորթութիւններով
Թագաւորութիւնը պիտի առնէ ։

զ Հմր 10 ։

22 Եւ անոր առջևէն զ հեղեղին բա-
զուկներովը պիտի ընկղմին , ու պի-
տի կոտրին . նաև ուխտին իշխանը ։

է Գլ . ը . 10 , 11 , 25 ։ ։ Կատարուեցաւ՝ իբր 171
ի Գլ . ը . 25 ։

23 Քանզի անոր հետ դաշնակցութիւն
ընելէն ետքը , ի անիկայ նենգու-
թիւն պիտի ընէ , և պիտի ելլէ , ու
24 պզտիկ ազգով պիտի յաղթէ ։ Ա-
նիկայ հանդարտութեամբ խիստ
պարարտ գաւառին մէջը լ պիտի
մտնէ , ու իր հայրերուն , ու հարցը
հայրերուն չըրածը ինքը պիտի ընէ .
անոնց մէջը աւար և կողոպուտ ու
ստացուածք պիտի բաշխէ , ու մին-
չև մէկ ժամանակ մը պարիսպներուն
դէմ իր խորհուրդները պիտի խոր-

Կատարուեցաւ՝ իբր 170

25 հի ։ Ու մեծ զօրքով՝ իր զօրու-
թիւնը ու սիրտը պիտի գրգռէ հա-
րաւի Թագաւորին դէմ . հարաւի
Թագաւորն ալ խիստ մեծ ու զօ-
րաւոր զօրքով պատերազմի պիտի
ելլէ . բայց պիտի չկարենայ դիմա-
նալ . վասն՝ զի անոր դէմ խոր-
26 հուրդներ պիտի խորհին ։ Անոր
ազնիւ կերակուրները ուտողները
անգամ զանիկայ պիտի կոտրեն . և
անոր զօրքը պիտի † ցրուի . ու շա-
տերը սպաննուած պիտի իյնան ։

† Կամ՝ կոխէ , Եբր . յորդի .

27 Եւ աս Թագաւորներուն երկուքին
ալ սիրտը չարութիւն ընելու հա-
մամիտեալ պիտի ըլլայ , ու մէկ սե-
ղանի վրայ սուտ պիտի խօսին .
բայց պիտի չյաջողի . վասն զի
ի վախճանը որոշուած ժամանակի
28 մէջ պիտի ըլլայ ։ Ու անիկայ շատ
հարստութիւնով իր երկիրը պիտի
դառնայ . և ւ իր սիրտը սուրբ ուխ-
տին դէմ պիտի ըլլայ , ու բան պիտի
տեսնէ , ու իր երկիրը պիտի դառ-
նայ ։

Ն . ք . ղ . ք . իբր 534
ի Հմր 29 , 35 , 40 ։ Գլ . ը . 19 ։
ւ Հմր 22 ։

29 Որոշուած ժամանակի մէջ պիտի
դառնայ , ու հարաւի վրայ պիտի
երթայ . բայց վերջինը ճ առջինին
30 պէս պիտի չըլլայ ։ ժ Քանզի Կի-
տացւոց նաւերը անոր վրայ պիտի
երթան . և անիկայ պիտի թուլ-
նայ , ու դառնալով յ սուրբ ուխտին
դէմ պիտի բարկանայ , ու բան
պիտի տեսնէ . և պիտի դառնայ ,
ու սուրբ ուխտը թողողներուն ու-
31 շադրութիւն պիտի ընէ ։ Ու ա-
նոր կողմէն բազուկներ պիտի կայ-
նին , ն և սրբարանը ու ամրոցը պիտի
պղծեն , ու մշտնջենաւոր ողջակէզը պի-
տի վերցընեն , ու աւրող պղծու-
32 թիւնը պիտի դնեն ։ Եւ ուխտին
դէմ ամբարշտութիւն ընողները՝
շողոքորթութիւններով գլխէ պի-
տի հանէ . բայց իրենց Աստուածը
ճանչցողներուն ժողովուրդը՝ ոյժ
պիտի գտնեն , ու բան պիտի
33 տեսնեն ։ ւ Եւ ժողովուրդին խե-
լացիները շատերուն պիտի սոր-
վեցընեն , ° ու ատեն մը՝ սուրի ,
կրակի , գերութեան և յափշտա-
34 կութեան պիտի հանդիպին ։ Ու
երբոր իյնալու հանդիպին ,
քիչ մը օգնութիւն պիտի գտնեն .
ու շատերը շողոքորթութիւննե-
35 րով անոնց պիտի յարին ։ Եւ
խելացիներէն ոմանք իյնալու
պիտի հանդիպին , որպէս զի ւ մին-
չև վերջին ժամանակը ղ զանոնք
փորձէ , մաքրէ ու ճերմկցընէ .
Զ քանզի անիկայ տակաւին որոշ
36 ժամանակ մը պէտք է ։ Եւ ան
Թագաւորը ո իր ուզածը պիտի
ընէ , ու * զինքը բոլոր աստուած-
ներէն վեր պիտի բարձրացընէ ու
պիտի մեծցընէ , և ւ Աստուծոց
Աստուծոյն դէմ սոսկալի բաներ
պիտի խօսի , ու յաջողութիւն
պիտի գտնէ՝ ո մինչև որ բարկու-
թիւնը կատարուի . քանզի նա-
խասահմանուածը 'ի գործ պիտի
37 դրուի ։ Եւ անիկայ իր հարցը
աստուածները բանի տեղ պիտի
չսեպէ . ր և կանանց ցանկութիւնը ,
ց ու ընաւ մէկ աստուած մը պիտի
չսեպէ . վասն զի զինքը ամենուն
38 վրայ պիտի մեծցընէ ։ Հապա
բերդերուն աստուածը իր եղած
տեղը պիտի պատուէ , ու իր հայ-
րերուն չճանչցած աստուածը՝ ոս-
կիով , արծաթով , պատուական

Կատարուեցաւ՝ իբր 169
ճ Հմր 25 ։
Կատարուեցաւ՝ իբր 168
ժ Թու . իդ . 24 ։ Երեմ . բ . 10 ։
յ Հմր 28 ։
ն Գլ . ը . 11 ։ Ժբ . 11 ։
ւ Մաղ . բ . 7 ։
° Եբր . ժա . 35 , ևն ։
ւ Գլ . ը . 17 , 19 ։ Հմր 40 ։
ղ Գլ . ժբ . 10 ։ Ա Պետ . ա . 7 ։
Զ Հմր 29 ։
ո Հմր 16 ։
* Գլ . է . 8 , 25 ։ ր . 25 ։ բ Թես . բ . 4 ։ Յայտ . ժգ . 5 , 6 ։
ւ Գլ . ը . 11 , 24 , 25 ։
ո Գլ . թ . 27 ։
ր Ա Տիմ . դ . 3 ։
ց Եսա . ժդ . 13 ։ բ Թես . բ . 4 ։

Ն. Գ. Գ.Ք. Իրր 534

քարերով ու ցանկալի բաներով
39 պիտի պատուէ ։ Եւ օտար
աստուածոյն հետ զօրաւոր բերդե-
րու մէջ բան պիտի տեսնէ, ու զա-
նիկա ճանչցողներուն փառքը պիտի
շատցընէ, և շատերուն վրայ տի-
րել պիտի տայ անոնց, ու երկիրը
*կերև վարձք" պիտի բաժնէ ։
40 — Եւ վերջին ժամանակը հարաւի
թագաւորը անոր հետ պիտի ծեծ-
կուի. ու հիւսիսի թագաւորը
կառքերով, † ձիաւորներով ու
շատ նաւերով † մրրիկի պէս անոր
դէմ պիտի երթայ, ու երկիրները
պիտի մտնէ, ու կոխելով պիտի
41 անցնի. Եւ փառաւոր երկիրը
պիտի մտնէ, ու շատ երկիրներ
տակնուվրայ պիտի ըլլան. բայց
անոր ձեռքէն ասոնք պիտի ազա-
տին. § Եդովմ, Մովաբ, ու Ամ-
մոնի որդւոց գլխաւոր մասը ։
42 Եւ իր ձեռքը երկիրներուն վրայ
պիտի երկնցընէ, ու Եգիպտոսի
երկիրը պիտի չկարենայ ազատիլ ։
43 Եւ ոսկիի, ու արծաթի գանձե-
րուն, ու Եգիպտոսի բոլոր պա-
տուական բաներուն պիտի տիրէ.
և Լիբէացիք ու Եթէովպացիք ա-
44 նոր † հետևող պիտի ըլլան ։ Բայց
արևելքէն ու հիւսիսէն լուրեր զա-
նիկա պիտի խռովե-
ցընեն. ու մեծ բարկութեամբ
պիտի ելլէ որ շատերը կորսնցընէ
45 ու բնաջինջ ընէ ։ Եւ պալատնե-
րու պէս վրանները ‡ ծովերուն
մէջտեղը — փառաւոր ու սուրբ լե-
ռան վրայ" պիտի կանգնէ. Բայց
անիկայ մինչև իր վախճանը պիտի
հասնի. ու անոր օգնութիւն ը-
նող պիտի չըլլայ ։

Կամ՝ գնով
— Հմր 35 ։
† Եզեկ. ԼԸ. 4. 15. Յայտ. Թ. 16 ։
+ Ես. Իա. 1. Զաք. Թ. 14 ։
• Հմր 10, 22 ։
§ Տես Ես. ԺԱ. 14 ։
† Եբր. քայլերուն մէջ
‡ Կամ՝ ծովերուն ու փառաւոր լեռանը մէջտեղը
— Սաղ. ԽԸ. 2. Հմր 16, 41. Տես Բ Թես. Բ. 4 ։
Տես Բ Թես. Բ. 8. Յայտ. ԺԹ. 20 ։

## ԳԼ. ԺԲ

1 Միքայէլ պիտի ազատէր Իսրայէլը իրենց նեղութենէն ։ 5 Դանիէլ ժամանակներուն վրայով տեղեկութիւն կը ստանայ ։

1 Եւ այն ժամանակը քու ժողովուր-
դիդ որդւոցը վրայ կայնող
— Միքայէլ մեծ իշխանը պիտի ել-
լէ. Ու այնպիսի նեղութեան ժա-
մանակ պիտի ըլլայ, որ ազգ ըլ-
լալէն մինչև այն ատենը՝ անանկը
եղած չէ. և այն ժամանակը քու
ժողովուրդդ պիտի ազատի, ա-
մէն ով որ գրքին մէջը գրուած
2 գտնուի ։ Ու երկրիս հողին մէջը
քնացողներուն շատերը պիտի ար-
թըննան, ոմանք յաւիտենական
կենաց համար, և ոմանք ալ նա-
խատանաց ու յաւիտենական ան-
3 արգանաց համար ։ Եւ իմաս-
տունները երկնից հաստատութեանը
լոյսին պէս, ու անոնք որ շատե-
րը արդարութեան կ'առաջնոր-
դեն՝ աստղերուն պէս պիտի
փայլին յաւիտեանս յաւիտենից ։
4 Եւ դուն՝ ով Դանիէլ՝ այս խօս-
քերը գոցէ, ու գիրքը կնքէ մին-
չև վերջին ժամանակը. շատերը
ուշադրութեամբ պիտի կարդան",
ու գիտութիւնը պիտի շատնայ ։
5 Ու ես Դանիէլս տեսայ որ՝ ահա
ուրիշ երկու մարդիկ կայներ էին.
մէկը գետին մէկ եզերքը, ու մէ-
6 կալը գետին միւս եզերքը ։ Ու
մէկը ըսաւ այն կտաւ հագած մար-
դուն՝ որ գետին ջուրերուն վրայ
կայներ էր. Այս զարմանալի բաներուն
վերջը մինչև ե՞րբ պիտի ըլլայ ։
7 Եւ լսեցի որ՝ այն կտաւ հագած
մարդը որ գետին ջուրերուն վրայ
կայներ էր, իր աջ ու ձախ ձեռքե-
րը երկինքը վերցընելով՝ յաւիտեան
կենդանի եղողին վրայ երդում ը-
րաւ, Որ ժամանակ մը, ժամա-
նակներ, ու կէս ժամանակ պիտի ըլ-
լայ. Ու երբոր սուրբ ժողովուր-
դին զօրութիւնը բոլորովին ցրուի,
ասոնց ամէնը պիտի կատարուի ։
8 Ու ես լսեցի, բայց չհասկըցայ.
ու ըսի. Ո՛վ տէր իմ. ասոնց վեր-
9 ջը ի՞նչ պիտի ըլլայ ։ Եւ անիկայ
ըսաւ. Գնա՛ ով Դանիէլ. քանզի
այս խօսքերը մինչև վերջին ժամա-
նակը գոցուած ու կնքուած են ։
10 Շատերը պիտի մաքրուին, ու
պիտի ճերմըկնան, ու պիտի փոր-
ձուին. բայց ամբարիշտները ամ-
բարշտութիւն պիտի ընեն. ու ըլ-
նաւ մէկ ամբարիշտ մը պիտի չհաս-
կընայ. հապա իմաստունները պի-
11 տի հասկընան ։ Ու մշտնջենաւոր
զոհին § վերցուելուն ; և աւերող
պղծութեանը դրուելուն ժամանա-
կէն" հազար երկու հարիւր իննսուն
12 օր պիտի ըլլայ ։ Երանի՛ անոր՝ որ
պիտի սպասէ, ու հազար իրեք հա-
րիւր երեսունուհինգ օրուան պիտի
13 հասնի ։ Բայց դուն գնա՛ մինչև
վախճանը. Ու պիտի հանգ-
չիս. ու օրերուն վերջը քու վիճա-
կիդ մէջը պիտի կայնիս ։

Ն. Գ. Գ.Ք. Իրր 534.

Մատ. ԻԵ. 46. Յովհ. Ե. 28, 29. Գործ. ԻԴ. 15 ։
Ես. ԿԶ. 24 ։
Գլ. ԺԱ. 33, 35 ։
Յակ. Ե. 20 ։
Հռով. ԺԵ. 41, 42 ։
Ա Կոր. Գ. 18. Մատ. ԺԳ. 43 ։
Գլ. Ը. 26. Հմր 9. Յայտ. Ժ. 4. Տես Յայտ. Իբ. 10 ։
Հմր 9 ։
Կամ՝ հասկնալու պիտի աշխատին ։
Գլ. Ժ. 4 ։
Գլ. Ժ. 5 ։
Գլ. Ը. 13 ։
Բ Օր. ԼԲ. 40. Յայտ. Ժ. 5, 6 ։
Գլ. Գ. 34 ։
Գլ. Է. 25. Ժա. 13. Յայտ. ԺԲ. 14 ։
Ղուկ. ԻԱ. 24. Յայտ. Ժ. 7 ։
Գլ. Ը. 24 ։
Հմր 4 ։
Գլ. ԺԱ. 35. Զաք. ԺԳ. 9 ։
Ովս. ԺԴ. 9. Յայտ. Ի. 20. Իբ. 11 ։
Գլ. ԺԱ. 33, 35. Յովհ. Է. 17. Ը. 47. ԺԸ. 37 ։
Գլ. Ը. 11. ԺԱ. 31 ։
§ Կամ՝ վերցուած ժամանակէն՝ մինչև աւերող պղծութեանը դրուիլը՝
Հմր 9 ։
Ես. ԾԷ. 2. Յայտ. ԺԴ. 13 ։
— Սաղ. ... 5 ։

# ՄԱՐԳԱՐԷՈՒԹԻՒՆ ՈՎՍԷԱՅ

Ն. Ք. Գ. Ք.
Իրր 785

## ԳԼՈՒԽ Ա

1 Ովսէէ՝ հոգևոր պոռնկութեան դէմ Աստուծոյ դատաստանը ցուցընելու համար, իրեն կնիկ կ՚առնէ Գոմերը, 4 որ կը ծնանի Յեզրայէլը, 6 Լորուհաման, Տ ու Լօամմին։ 10 Յուդային ու Իսրայէլին վերադարձութիւնը։

1 Տէրոջը խօսքը՝ որ Բէերիի որդւոյն
Ովսէէին եղաւ, Յուդայի թագաւորներուն՝ Ոզիային, Յովաթամին, Աքազին, — Եզեկիային օրերը, և Իսրայէլի թագաւորին Յովասու որդւոյն Յերոբովամին օրերը։
2 Ովսէէին միջոցով խօսած Տէրոջը խօսքին սկիզբը։ Եւ Տէրը ըսաւ Ովսէէին. — Գնա, քեզի պոռնկութեան կնիկ մը, ու պոռնկութեան տղաքներ առ. քանզի Բերկիրը Տէրոջմէ խոտորելով, խիստ շատ պոռնկեցաւ։
3 Եւ անիկայ գնաց, ու Դաբելայիմի աղջիկը Գոմերը առաւ. և անիկայ յղացաւ, ու անոր որդի մը
4 ծնաւ։ Եւ Տէրը անոր ըսաւ. Անոր անունը Յեզրայէլ դիր. քանզի քիչ ատենէն ետքը ԳՅեզրայէլի մէջ Թափուած արիւնները Յէուին տունէն պիտի պահանջեմ, Դու Իսրայէլի տանը թագաւորութիւնը պի-
5 տի դադրեցնեմ։ Եւ պիտի ըլլայ որ ան օրը՝ Յեզրայէլի հովիտին մէջ Իսրայէլին աղեղը պիտի կոտրեմ։
6 Եւ Գոմեր դարձեալ յղացաւ, ու աղջիկ մը ծնաւ։ Եւ Տէրը ըսաւ Ովսէէին. անոր անունը՝ *Լորուհամա դիր. Զքանզի ալ պիտի չողորմիմ Իսրայէլի տանը, †հապա զանիկայ բոլորովին պիտի վերցը-
7 նեմ"։ Բայց Յուդայի տանը ողորմութիւն պիտի ընեմ, ու զանոնք՝ իրենց Տէր Աստուծովը պիտի փրկեմ, և Էզանոնք աղեղով, կամ սրով, կամ պատերազմով, ձիերով, կամ ձիաւորներով պիտի չփրկեմ։
8 Ու երբոր Լորուհաման կաթէն կտրեց, նորէն յղացաւ, ու որդի մը
9 ծնաւ։ Ան ատենը Տէրը ըսաւ. Անոր անունը՝ ‡Լօամմի դիր. քանզի դուք իմ ժողովուրդս չէք, ու ես ձեզի Աստուած պիտի չըլլամ։
10 Բայց Իսրայէլի որդւոցը թիւը ծովու աւազին պէս պիտի ըլլայ, որ անչափ ու անթիւ է. Ժու ան տեղը որ անոնց ըսուեցաւ թէ՝ Դուք իմ ժողովուրդս չէք, հոն անոնք Կենդանի Աստուծոյն որ-
11 դիքը պիտի ըսուին։ Եւ Յուդայի որդիքը, ու Իսրայէլի որդիքը մէկտեղ պիտի ժողվուին, ու իրենց վրայ իշխան մը պիտի դնեն, ու երկրէն պիտի ելլեն. քանզի Յեզրայէլին օրը մեծ պիտի ըլլայ։

## ԳԼ. Բ

1 Ժողովուրդին կռապաշտութիւնը։ 6 Անոնց դէմ Աստուծոյ դատաստանները։ 14 Անոնց հետ հաշտուելուն խոստմունքները։

1 Ձեր եղբայրներուն՝ ‖Ամմի, ու ձեր
քոյրերուն՝ §Ռուհամա՝ ըսէք.
2 Վիճեցէք ձեր մօրը հետ, վիճեցէք. քանզի — անիկայ իմ կնիկս չէ, ու ես անոր էրիկը չեմ. և անիկայ իր երեսէն իր Բպոռնկութիւնները, ու իր ծիծերուն մէջէն իր շնութիւնները թող վերցնէ.
3 Որ չըլլայ թէ Գզանիկայ մերկացընեմ, ու զանիկայ իր Դծնած օրուանը պէս թողում, և զանիկայ Եանապատի դարձընեմ, ու զանիկայ անջուր երկրի պէս ընեմ, ու զանիկայ Զծարաւով մեռցընեմ։
4 Եւ անոր որդւոցը ողորմութիւն պիտի չընեմ. քանզի անոնք Էպոռ-
5 նկութեան որդիք են։ Ըքանզի անոնց մայրը պոռնկութիւն ըրաւ. զանոնք յղացողը խայտառակութիւն գործեց. վասն զի ըսաւ. Իմ հոմանիներուս ետեւէն երթամ, Թորոնք իմ հացս ու ջուրս, բուրդս ու քթանս, եղս ու խմելիքներս
6 Ժկու տան։ Անոր համար ահա ես՝ Ժփուշերով ցանգ պիտի քաշեմ ⁑անոր ճամբուն", ու անոր բոլորտիքը պատ պիտի շինեմ, որ իր ճամբաները չկրնայ գտնել։
7 Եւ անիկայ իր հոմանիներուն ետեւէն պիտի երթայ, բայց անոնց պիտի չհասնի, ու զանոնք պիտի փնտռէ, բայց պիտի չկրնայ գտնել. ան ատենը պիտի ըսէ. ԻԵրթամ իմ առաջի էրկանս դառնամ. քանզի ան ատենը հիմակուընէ աղէկ էր
8 ինծի։ Եւ անիկայ Իչգիտցաւ որ

Գլ. գ. 1։
Բ Օր. լա. 16։ Սաղ. հգ. 27։ Երեմ. բ. 13։ Եզեկ. իգ. 3. և այլն։
Գ Դ Թագ. Ժ. 11։
Դ Տես Դ Թագ. ԺԵ. 10, 12։
Ե Տես Դ Թագ. ԺԵ. 29։
* Այս՝ չողորմեալ։
Զ Դ Թագ. ԺԷ. 6. 23։
† Կամ՝ որ անոնց մէկ կերպով մը ներեմ։
Է Դ Թագ. ԺԹ. 35։
Ը Տես Զաք. Դ. 6։ Թ. 10։
‡ Այս՝ իմ ժողովուրդս չէ։
Թ Ծն. ԻԲ. 12։ Հռով. Թ. 26. 27։

Ն. Ք. Գ. Ք.
Իրր 785
Ժ Հռով. Թ. 25. 26։ Ա Պետ. Բ. 10։
Ի Գլ. Ը. 23։
Լ Յոհ. Ա. 12։ Ա Յովհ. Գ. 1։
Ի Եսա. ԺԱ. 12, 13։ Երեմ. Գ. 18։ Եզեկ. ԼԷ. 23։ ԼԵ. 16-24։
‖ Այս՝ իմ ժողովուրդս։
§ Այս՝ ողորմեալ։
— Եսա. Ծ. 1։
Բ Եզեկ. ԺԶ. 25։
Գ Երեմ. ԺԳ. 22, 26։ Եզեկ. ԺԶ. 37, 39։
Դ Եզեկ. ԺԶ. 4։
Ե Եզեկ. ԺԹ. 13։
Զ Ամով. Ը. 11, 13։
Է Յոհ. Ը. 41։
Ը Եսա. Ա. 21։ Երեմ. Գ. 1, 6, 8, 9։ Եզեկ. ԺԶ. 15, 16. և այլն։
Թ Հոս. 12։ Երեմ. ԽԴ. 17։
Ժ Յոբ. Գ. 23։ ԺԹ. 8։ Ողբ. Գ. 7, 9։
⁑ Եբր. քու ճամբադ։
Ի Գլ. Ե. 15։ Ղուկ. ԺԵ. 18։
Լ Եզեկ. ԺԶ. 8։
Ի Եսա. Ա. 3։

ցորենը ու գինին ու եղը ես անոր
կու տայի, և անոր արծաթը ու
ոսկին ես կը շատցընէի, որոնցմով
անոնք Բահաղի կուռքեր շինեցին ։
9 Անոր համար պիտի դառնամ, ու
իմ ցորենս իր եղանակին մէջ, ու
իմ գինիս իր որոշ ժամանակին մէջ
պիտի առնեմ, և անոր մերկու-
թիւնը ծածկող բուրդս ու քթանս
10 ետ պիտի առնեմ ։ Ու հիմա անոր
հոմանիներուն առջեւը՝ անոր
անզգամութիւնը պիտի յայտնեմ.
ու մարդ մը պիտի չըլլայ որ զանի-
11 կայ իմ ձեռքէս ազատէ ։ Եւ ա-
նոր բոլոր ուրախութիւնը, անոր
տօները, ամսագլուխները, ու շա-
բաթները, և բոլոր հանդիսաւոր
12 օրերը պիտի խափանեմ ։ Ու պի-
տի աւրեմ անոր որթերը, ու թը-
զենիները, որոնց համար կ'ըսէր
թէ՝ Ասոնք իմ հոմանիներուս ինծի
տուած պարգեւներն են, և զանոնք
անտառի պիտի դարձնեմ. ու
զանոնք դաշտի գազանները պի-
13 տի ուտեն ։ Եւ զանիկայ պիտի
պատժեմ այն օրերուն համար, ո-
րոնց մէջ անիկայ Բահաղիմներուն
խունկ կը ծխէր. իր օղերովը ու
մանեակներովը կը զարդարուէր, և
իր հոմանիներուն ետեւէն կ'երթար,
ու զիս մոռցեր էր, կ'ըսէ Տէրը ։
14 Անոր համար ահա ես զանիկայ
պիտի համոզեմ, և զանիկայ անա-
պատը պիտի տանիմ, ու անոր
15 սրտին պէս պիտի խօսիմ ։ Եւ
անկէ անոր այգիները, ու Աքորի
ձորը՝ յոյսի դուռի համար անոր
պիտի տամ. և հոն՝ իր մանկու-
թեան օրերուն պէս, ու Եգիպ-
տոսի երկրէն ելած օրուանը պէս՝
16 երգեր պիտի երգէ ։ Ու պիտի ըլլայ
որ այն օրը՝ կ'ըսէ Տէրը, զիս՝ Իմ Է-
րիկս՝ պիտի կոչես, ու մէյմըն ալ
զիս՝ Իմ *Բահաղս՝ պիտի չկոչես ։
17 Ու անոր բերնէն Բահաղիմին ա-
նուանները պիտի վերցընեմ. ու ա-
նոնք մէյմըն ալ իրենց անուաննե-
18 րովը պիտի չյիշուին ։ Եւ անոնց
համար՝ այն օրը՝ դաշտի գազաննե-
րուն հետ, ու երկինքի թռչուննե-
րուն հետ, ու երկրի սողուններուն
հետ ուխտ պիտի ընեմ, ու երկրէն՝
աղեղը, սուրը ու պատերազմը
պիտի կոտրեմ, և զանոնք ապա-
հովութեամբ պիտի պառկեցընեմ ։
19 Ու քեզ յաւիտեան ինծի պիտի
նշանեմ, և քեզ՝ արդարութիւ-
նով, իրաւունքով, ողորմութիւ-
նով ու գթութիւնով ինծի պիտի
20 նշանեմ. Այո՛ քեզ ճշմարտու-
թիւնով ինծի պիտի նշանեմ. ու
21 Տէրը պիտի ճանչնաս ։ Եւ պիտի
ըլլայ որ այն օրը՝ կ'ըսէ Տէրը, պա-
տասխան պիտի տամ. ես երկինք-
ներուն պատասխան պիտի տամ,
ու անոնք երկրին պատասխան պի-
22 տի տան, Ու երկիրը ցորենին, գի-
նիին ու եղին պատասխան պիտի
տայ, և անոնք †Յեզրայելին պա-
23 տասխան պիտի տան ։ Ու զանի-
կայ ինծի համար երկրի վրայ պիտի
սերմանեմ, ու չողորմեալին պիտի
ողորմիմ, և իմ ժողովուրդս չե-
ղողին՝ Դուն իմ ժողովուրդս ես՝
պիտի ըսեմ. ան ալ ինծի՝ Իմ Աս-
տուածս ես՝ պիտի ըսէ ։

## ԳԼ. Գ

1 Շնացող կնկան մը օրինակովը՝ 4 կը ցուցուի Իսրայէլին ամայութիւնը իրենց դարձի գալէն առաջ ։

1 Անկէ ետքը Տէրը ինծի ըսաւ.
Նորէն գնա, իր բարեկամէն
սիրուած շնացող կնիկ մը սիրէ,
ինչպէս որ Տէրը Իսրայէլի որդիքը
կը սիրէ, թէեւ անոնք օտար աս-
տուածներու կը դառնան, ու չամ-
չեղէն կարկանդակներ կը սիրեն ։
2 Ուստի զանիկայ տասնուհինգ սիկղ
արծաթով, ու մէկ ու կէս քոռ
3 գարիով ինծի առի. Եւ անոր ը-
սի. Ինծի համար շատ օրեր նըս-
տիս, շնութիւն չընես, և ուրիշ
մարդու մը չմօտենաս. ու ես ալ
քեզի համար այնպէս պիտի ըլլամ ։
4 Քանզի Իսրայէլի որդիքը շատ
օրեր առանց թագաւորի, առանց
իշխանի, առանց զոհի, առանց
կուռքի, առանց եփուտի ու
5 թերափիմի պիտի նստին ։ Ետքը
Իսրայէլի որդիքը պիտի դառնան,
ու իրենց Տէր Աստուածը, և ի-
րենց Դաւիթ թագաւորը պիտի
փնտռեն. ու վերջի օրերը Տէրոջը՝
ու անոր բարութեանը պիտի ա-
պաւինին ։

## ԳԼ. Դ

1 Աստուծոյ դատաստանները՝ ժողովուրդին, 6 ու քահանաներուն մեղացը համար, 12 և անոնց կռապաշտութեանը համար ։ 15 Յուդան կը յորդորուի որ Իսրայէլի վրայ եկած չարիքներէն խրատ առնէ ։

1 Տէրոջը խօսքը մտիկ ըրէք, ո՛վ
Իսրայէլի որդիք. քանզի Տէրը
երկրի բնակիչներուն հետ վէճ ու-
նի. քանզի երկրի վրայ ճշմարտու-
թիւն չկայ, ու ողորմութիւն չկայ,
ու Աստուծոյ գիտութիւնը չկայ ։
2 Երդումը, ստախօսութիւնը, մար-
դասպանութիւնը, գողութիւնը
ու շնութիւնը շատցեր են, ու ա-
րիւնները արիւններու կը հասնին ։
3 Անոր համար երկիրը սուգ պիտի
բռնէ, ու անոր բոլոր բնակիչնե-
րը՝ դաշտի գազաններուն, ու եր-
կինքի թռչուններուն հետ պիտի

Ն. Ք. Ք. Ծ. իրր 785
ծ Եզեկ. ԺԶ. 17, 18, 19 ։
կ Հմր 3 ։
հ Եզեկ. ԺԶ. 37 ։ ԻԳ. 29 ։
յ Ամով. Ը. 10 ։
ն Գ Թագ. ԺԲ. 32 ։ Ամով. Ը. 5 ։
շ Հմր 5 ։
ո Սաղ. Ձ. 12, 13 ։ Եսա. Ե. 5 ։
չ Եզեկ. ԻԳ. 40, 42 ։
պ Եզեկ. Ի. 35 ։
ջ Յես. Է. 26 ։ Եսա. ԿԵ. 10 ։
ռ Երեմ. Բ. 2 ։ Եզեկ. ԺԶ. 8, 22, 60 ։
ս Ել. ԺԵ. 1 ։
* Եբ՝ Տէրս՝
վ Ել. ԻԳ. 13 ։ Յես. ԻԳ. 7 ։ Սաղ. ԺԶ. 4 ։ Զաք. ԺԳ. 2 ։
տ Յոբ. Ե. 23 ։ Եսա. ԺԱ. 6-9 ։ Եզեկ. ԼԴ. 25 ։
ր Սաղ. ԽԶ. 9 ։ Եսա. Բ. 4 ։ Եզեկ. ԼԹ. 9, 10 ։ Զաք. Թ. 10 ։
ց Ղև. ԻԶ. 5 ։ Երեմ. ԻԳ. 6 ։
ւ Երեմ. ԼԱ. 33, 34 ։ Յով. ԺԷ. 3 ։
փ Զաք. Ը. 12 ։

Ն. Ք. Ք. Ծ. իրր 785
† Եբ՝ Աստուծոյ սերմանածին ։
ք Երեմ. ԼԱ. 27 ։
օ Գլ. Ա. 6 ։
ա Գլ. Ա. 10 ։ Զաք. ԺԳ. 9 ։ Հռով. Թ. 26 ։ Ա Պետ. Բ. 10 ։
ա Գլ. Ա. 2 ։
բ Երեմ. Գ. 20 ։
գ Տես Օր. ԻԱ. 13 ։
դ Գլ. Ժ. 3 ։
ե Ել. ԻԸ. 6 ։
զ Դատ. ԺԷ. 5 ։
է Երեմ. Ծ. 4, 5 ։ Տես Գլ. Ե. 6 ։
ը Երեմ. Լ. 9 ։ Եզեկ. ԼԴ. 23, 24 ։ ԼԷ. 22, 24 ։
թ Եսա. Բ. 2 ։ Երեմ. Լ. 24 ։ Եզեկ. ԼԸ. 8, 16 ։ Դան. Բ. 28 ։ Միք. Դ. 1 ։

իրր 780
ա Եսա. Ա. 18 ։ Կ. 13, 14 ։ Երեմ. ԻԵ. 31 ։ Գլ. ԺԲ. 3 ։ Միք. Զ. 2 ։
բ Երեմ. Դ. 22 ։ Ե. 4 ։
գ Երեմ. Դ. 28 ։ ԺԲ. 4 ։ Ամով. Ե. 16 ։ Ը. 8 ։
դ Սոփ. Ա. 3 ։

նուազին , ու ծովու ձուկերն ալ
4 պիտի սպառին ։ Սակայն մարդ մը
թող չվիճի . ու մարդ մը թող չը-
յանդիմանէ . քանզի քու ժողո-
վուրդդ՝ ᵃքահանային հետ վիճող-
5 ներու պէս է ։ Ուստի դուն ցո-
րեկով պիտի գլորիս , ու մարգա-
րէն ալ քեզի հետ գիշերով պիտի
գլորի . և քու մայրդ բնաջինջ
պիտի ընեմ ։
6 ᵇԻմ ժողովուրդս՝ գիտութիւն
չունենալուն համար բնաջինջ ե-
ղաւ . որովհետև դուն գիտութիւ-
նը մերժեցիր , ես ալ քեզ պիտի
մերժեմ , որ մէյմըն ալ ինծի քա-
հանայ չըլլաս . և որովհետև քու
Աստուծոյդ օրէնքը մոռցար , ես
ալ քու որդիներդ պիտի մոռնամ ։
7 ᶜԱնոնք որչափ որ բազմացան , այն-
չափ ալ ինծի դէմ մեղք գործե-
ցին . ᵈՓառքերնին անոնց փառքը ա-
8 նարգութեան պիտի փոխեմ ։ Ա-
նոնք իմ ժողովուրդիս մեղքը կ'ու-
տեն , ու անոնց հոգիները իրենց
անօրէնութեանը կը համոզեն ։
9 Ուրեմն ᵉինչպէս ժողովուրդին՝
նոյնպէս ալ քահանային պիտի
ըլլայ . և զանոնք իրենց ճամբանե-
րուն համեմատ պիտի պատժեմ ,
ու անոնց՝ իրենց գործքերուն փո-
10 խարէնը պիտի հատուցանեմ ։ Ու
ᶠպիտի ուտեն , բայց պիտի չկշտա-
նան . պոռնկութիւն պիտի ընեն ,
բայց պիտի չշատնան . քանզի Տէ-
րոջը ուշադրութիւն ընելը թողու-
ցին ։
11 Շնութիւնը , գինին ու քաղ-
12 ցուն՝ ᵍսիրտը կը խաբեն ։ Իմ ժո-
ղովուրդս իր ʰփայտին կը հարցը-
նէ , ու իր ցուպը իրեն կ'իմացը-
նէ . քանզի ⁱպոռնկութեան ոգին
զանոնք գլխէ հանեց . ու իրենց Աս-
տուածը թող տալով , պոռնկե-
13 ցան ։ ʲԼեռներուն գլուխները զոհ
կը մատուցանեն , ու բլուրներուն
վրայ՝ կաղնիի , կաղամախի ու բևեկ-
նիի տակ՝ անոնց հովանին հաճելի
ըլլալուն համար , խունկ կը ծխեն .
ᵏանոր համար ձեր աղջիկները պոռ-
նըկութիւն պիտի ընեն , ու ձեր
հարսերը շնութիւն պիտի ընեն ։
14 Ձեր աղջիկները պիտի չպատժեմ՝
երբոր պոռնկութիւն ընեն , ոչ ալ
ձեր հարսերը՝ երբոր շնութիւն ը-
նեն . քանզի *Ծերերը՝ իրենք պոռ-
նիկներուն հետը կը զատուին , ու
բոզերուն հետը կը զոհեն . ուստի
ˡանհանճար ժողովուրդը պիտի կոր-
ծանի ։
15 Թէև դուն պոռնկութիւն կ'ը-
նես , ով Իսրայէլ , Յուդան թող
յանցաւոր չըլլայ . ᵐու Գաղգաղա
մի՛ մտնէք , ու ⁿԲեթաւան մի՛ ել-

ᵃ Բ Օր . ԺԷ . 12 ։ ᵇ Տն . Երեմ . Գ . 4 . 5 ։ Ժն . 8 ։
ᵇ Եսա . Ե . 13 ։
ᶜ Գլ . Ժ . 6 ։
ᵈ Ա . Թագ . Բ . 30 ։ Մաղ . Բ . 9 ։ Փիլ . Գ . 19 ։
ᵉ Եսա . ԻԴ . 2 ։ Երեմ . Ե . 31 ։
ᶠ Ղև . ԻԶ . 26 ։ Միք . Զ . 14 ։ Անգ . Ա . 6 ։
ᵍ Եսա . ԻԸ . 7 ։
Տն . Ժող . Է . 7 ։
ʰ Երեմ . Բ . 27 ։ Ամբ . Բ . 19 ։
ⁱ Եսա . ԽԴ . 20 ։ Գլ . Ե . 4 ։
ʲ Եսա . Ա . 29 ։ ԾԷ . 5 . 7 ։ Եզեկ . Զ . 13 ։ Ի . 28 ։
ᵏ Ամով . Է . 17 ։ Հռովմ . Ա . 28 ։
ˡ Հմր 1 . 6 ։
ᵐ Գլ . Թ . 15 ։ ԺԲ . 12 ։ Ամով . Դ . 4 ։ Ե . 5 ։
ⁿ Գ . Թագ . ԺԲ . 29 ։ Գլ . Ժ . 5 ։

լէք , ᵒև Տէրը կենդանի է՝ ըսելով
16 երդում մի ընէք ։ Քանզի Իսրա-
յէլը ᵖկամակոր երինջի պէս ապըս-
տամբեր է . հիմա Տէրը լայնարձակ
տեղ մը գառներու պէս պիտի ա-
17 րածէ զանոնք ։ Եփրեմը կուռքե-
րուն յարեր է . ᵠզանիկայ թող
18 տուր ։ Անոնց *խնճոյքը ապակա-
նած է . շատ պոռնկութիւն ըրին .
Տուէք ըսել կը սիրեն . ամօթ Հա-
19 նոնց իշխաններուն ։ ʳՀովը զանի-
կայ իր թևերուն վրայ պիտի կապէ .
ու ˢանոնք իրենց զոհերէն պիտի
ամչնան ։

ԳԼ . Ե

1 Իսրայէլի քահանաներուն , ժողովուրդին ու
իշխաններուն զանազան մեղքերուն համար՝
Աստուծոյ դատաստանները անոնց վրայ պիտի
ըլլար ։ 15 մինչև իրենց ապաշխարելը ։

1 Լսեցէք ասիկայ՝ ով քահանաներ ,
ու մտիկ ըրէք՝ ով Իսրայէլի
տունը , ու ականջ տուէք՝ ով Թա-
գաւորին տունը . ինչու որ ձեզի
համար դատաստան կայ . քանզի
ᵃդուք Մասփայի մէջ որոգայթ ,
և Թաբօրի վրայ տարածուած վարմ
2 եղաք ։ Մոլորածները սպանութիւն
ընելով խորը խորասոյզ եղան ,
†թէև ես անոնց ամենուն խրատ չ-
3 տուի ։ ᵇԵս Եփրեմը կը ճանչնամ ,
ու Իսրայէլը ինծմէ պահուած չէ .
այո հիմա՝ ով Եփրեմ , ᶜդուն շը-
նութիւն կ'ընես , ու Իսրայէլը
4 պղծուած է ։ ‡Անոնք իրենց գործ-
քերը չեն շտկեր , որ իրենց Աս-
տուծոյն դառնան . քանզի անոնց
մէջը ᵈպոռնկութեան ոգի կայ , ու
5 Տէրը չեն ճանչնար ։ ‖Ուստի ᵉԻս-
րայէլին հպարտութիւնը իր երեսին
առջևը պիտի խոնարհի . և Իսրա-
յէլը ու Եփրեմը իրենց անօրէնու-
թեամբը պիտի գլորին . Յուդան
6 ալ անոնց հետ պիտի գլորի ։ ᶠԱ-
նոնք իրենց ոչխարներովը ու ար-
ջառներովը Տէրը փնտռելու պիտի
երթան , բայց պիտի չգտնեն . ա-
7 նիկայ անոնցմէ քաշուեցաւ ։ ᵍԱ-
նոնք Տէրոջը անհաւատարմութիւն
ըրին . քանզի օտար տղաքներ ծնան .
հիմա իրենց վիճակներովը մէկտեղ
ʰ§մէկ ամսուան մէջ պիտի սպա-
ռին ։
8 ⁱԳաբաայի մէջ շեփոր հնչեցու-
ցէք , ʲՌամայի մէջ աւազափող .
ᵏԲեթաւանի մէջ ˡբարձրաձայն
կանչեցէք , Ետևէդ՝ ով Բե-
9 նիամին ։ Յանդիմանութեան օրը՝
Եփրեմը աւերակ պիտի ըլլայ . Իս-
րայէլի ցեղերուն մէջ ճշմարիտը
10 գիտցուցի ։ Յուդայի իշխանները
ᵐսահմաններ փոխողներու պէս ե-
ղան . անոնց վրայ ջուրի պէս պիտի
11 թափեմ իմ բարկութիւնս ։ Եփ-

ᵒ Ամով . Ը . 14 ։ Սոփ . Ա . 5 ։
ᵖ Երեմ . Գ . 6 ։ Է . 24 ։ Ը . 5 ։ Զաք . Է . 11 ։
ᵠ Մատ . ԺԵ . 14 ։
* Կամ՝ գինին
ʳ Միք . Գ . 11 ։ Է . 3 ։
ˢ Երեմ . Դ . 11 . 12 ։ Ծա . 1 ։
Եսա . Ա . 29 ։ Երեմ . Բ . 26 ։

ᵃ Գլ . Զ . 9 ։
† Կամ՝ Ուստի ես անոնց ամենուն վրայ պատիժ պիտի բերեմ ։
ᵇ Ամով . Գ . 2 ։
ᶜ Եզեկ . ԻԳ . 5 ։ Գլ . Դ . 17 ։
‡ Կամ՝ Իրենց գործքերը զիրենք չեն թողուր ։
ᵈ Գլ . Դ . 12 ։
‖ Կամ՝ Եւ Իսրայէլին հպարտութիւնը անոր երեսին դէմ կը վկայէ ։
ᵉ Գլ . Է . 10 ։
ᶠ Միք . Զ . 6 . 7 ։ Ա . 28 ։ Եսա . Ա . 15 ։ Երեմ . ԺԱ . 11 ։ Եզեկ . Ը . 18 ։ Միք . Գ . 4 ։ Յովհ . Է . 34 ։
ᵍ Եսա . ԽԸ . 8 ։ Երեմ . Գ . 20 ։ Ե . 11 ։ Գլ . Զ . 7 ։ Մաղ . Բ . 11 ։
ʰ Զաք . ԺԱ . 8 ։
§ Եբր . Մէկ ամիս զանոնք պիտի ուտէ ։
ⁱ Գլ . Ը . 1 ։ Յովել . Բ . 1 ։
ʲ Յես . Է . 2 ։ Գլ . Դ . 15 ։
ᵏ Եսա . Ժ . 30 ։
ˡ Դատ . Ե . 14 ։
ᵐ Բ Օր . ԺԹ . 14 ։ ԻԷ . 17 ։

Ն. Ք. ԳՔ. Իրր 780

ծ Բ Օր. Իը. 33։ ւ Գ Թագ. Ժբ. 28։ Միք. Զ. 16։ ՟ Երեմ. Լ. 12։ ՚ Դ Թագ. Ժե. 19։ Գլ. Է. 11։ Ժբ. 1։ ՟ Գլ. Ժ. 6։ * Կամ՝ Թշնամութիւն ընող ՟ Ողբ. Գ. 10։ Գլ. Ժգ. 7, 8։ ՟ Սաղ. Ծ. 22։ ՟ Ղև. Իզ. 40, 41։ Երեմ. ԻԹ. 12, 13։ Եզեկ. Զ. 9։ Ի. 43։ ԼԶ. 31։ ՟ Սաղ. ՀԸ. 34։

— Բ Օր. ԼԲ. 39։ ա Թագ. Բ. 6։ Յոբ. Ե. 18։ Գլ. Ե. 14։ ՟ Երեմ. Լ. 17։ ՟ Ես. Ծդ. 13։ ՟ Բ Թագ. Իգ. 4։ ՟ Սաղ. ՀԲ. 6։ ՟ Յոբ. ԻԹ. 23։ ՟ Գլ. Ժա. 8։ ՟ Գլ. Ժգ. 3։ ՟ Երեմ. Ա. 10։ Ե. 14։ † Եբր. տաշեցի. ՟ Երեմ. Իգ. 29։ Եբր. Դ. 12։ ‡ Կամ՝ քեզի եղած դատաստանները ՟ Ա Թագ. ԺԵ. 22։ Ժող. Ե. 1։ Միք. Զ. 8։ Մատ. Թ. 13։ ԺԲ. 7։ ՟ Սաղ. Ծ. 6, 9։ Առակ. ԻԱ. 3։ Ես. Ա. 11։ ՟ Երեմ. ԻԲ. 16։ Յով. ԺԷ. 3։ ՟ Յոբ. ԼԱ. 33։ ՟ Կամ՝ մարդոց ՟ Գլ. Ը. 1։ ՟ Գլ. Ե. 7։ ՟ Գլ. ԺԲ. 11։

րեմը ծ հարստահարուած, ու դա-
տաստանով կոտրուած է. քանզի
յօժար կամօք ւ հրամանին ետևէն
12 քալեց։ Ուստի ես Եփրեմին ցեցի
պէս՝ և Յուդայի տանը փայտի որ-
13 դի պէս պիտի ըլլամ։ Երբոր Եփ-
րեմ իր ախտը, և Յուդան իր ՟ վէր-
քը տեսաւ, Եփրեմը ՚ Ասորեստան
գնաց, ու * Յարէբ թագաւորին
պատգամաւորներ խրկեց. բայց անիկայ
ձեզ բժշկելու, ու ձեր վէրքը ա-
14 ռողջացընելու կարող չէ։ Քան-
զի ՟ ես Եփրեմին՝ առիւծի պէս,
և Յուդայի տանը՝ առոյգ առիւծի
պէս պիտի ըլլամ. ՟ ես՝ ես պիտի
պատառեմ, ու պիտի երթամ.
պիտի տանիմ, ու ազատող մը
15 պիտի չըլլայ։ Ես պիտի երթամ,
ու իմ տեղս դառնամ, մինչև որ
անոնք ՟ իրենց յանցաւոր ըլլալը
խոստովանին, ու իմ երեսս փըն-
տռեն. ՟ երբոր նեղութեան մէջ
մտնեն, զիս կանուխ պիտի փըն-
տռեն։

ԳԼ. Զ

1 Ապաշխարելու յորդորանք մը։ 4 Իսրայէլի կամակորութեանը և անօրէնութեանը վրայով գանգատ մը։

1 Եկէք, ու Տէրոջը դառնանք.
քանզի — անիկայ պատառեց,
ու ՟ անիկայ մեզ պիտի բժշկէ.
անիկայ զարկաւ, ու անիկայ մեզ
2 պիտի պատէ. Երկու օրէն ետքը
մեզ պիտի կենդանացընէ. երրորդ
օրը մեզ պիտի կանգնեցընէ, ու
3 անոր առջևը պիտի ապրինք։ ՟ Եւ
Տէրը պիտի ճանչնանք, ՟ առաջ դնելով
ճանչնալու ետևէ պիտի ըլլանք.
անոր ելքը ՟ արշալոյսի պէս պատ-
րաստուած է. ու ՟ անիկայ մեզի
պիտի գայ՝ ՟ անձրևի պէս, երկիրը
թրջող վերջի անձրևին պէս։
4 ՟ Քեզի ի՞նչ ընեմ՝ ով Եփրեմ.
քեզի ի՞նչ ընեմ՝ ով Յուդա.
վասն զի ձեր բարութիւնը ՟ ա-
ռաւօտեան ամպին պէս, ու կա-
նուխ իջած ցօղին պէս է, որ
5 կ'անցնի։ Ասոր համար ՟ մարգա-
րէներուն ձեռքովը զանոնք † կոտ-
րեցի. ՟ բերնիս խօսքերովը զա-
նոնք մեռցուցի. ու ‡ իմ իրա-
ւունքս" լոյսի պէս պիտի ելլէ։
6 Քանզի ես ՟ ողորմութիւն կ'ու-
զեմ, և ոչ՛ թէ զոհ, ու ողջակէզ-
ներէն աւելի՝ ՟ Աստուծոյ գիտու-
7 թիւնը։ Իսկ անոնք ՟ Ադամին
պէս ՟ ուխտազանց եղան. հոն
՟ ինծի անհաւատարմութիւն ը-
8 րին։ ՟ Գաղաադը անօրէնութիւն
ընողներու քաղաք է. արեան շա-
9 ւիղներով լեցուն է։ Ու ինչպէս
որ աւազակաց դունդերը մարդու
համար դարանամուտ կ'ըլլան,
այնպէս ալ ՟ քահանաներուն խումբը
Սիւքեմի ճամբուն մէջ սպա-
նութիւն կ'ընեն. քանզի անոնք
10 եղեռնագործութիւն կ'ընեն։ Իս-
րայէլի տանը մէջ ՟ սոսկալի բան
տեսայ. ՟ Եփրեմին պոռնկութիւն-
ները հոն է. Իսրայէլը պղծուե-
11 ցաւ։ ՟ Քեզի ալ հունձք մը
պատրաստուած է՝ ով Յուդա,
՟ երբոր իմ ժողովուրդիս գերու-
թիւնը դարձընեմ։

ԳԼ. Է

1 Ժողովուրդին զանազան մեղքերուն համար յանդիմանութիւն մը։ 11 Անոնց կեղծաւորութեանը համար Աստուծոյ բարկութիւնը անոնց դէմ կը բորբոքի։

1 Երբոր Իսրայէլը պիտի բժշկէի,
Եփրեմին անօրէնութիւնը,
ու Սամարիային չարութիւնները
յայտնուեցան. քանզի — անոնք
ստութիւն կը գործեն. ու գողը
ներս կը մտնէ. ու դուրսը աւա-
զակներուն գունդը կը մերկացընէ։
2 Եւ իրենց սրտին մէջը չեն մտա-
ծեր, թէ ես ՟ անոնց բոլոր չարու-
թիւնը կը յիշեմ. հիմա ՟ անոնց
գործքերը՝ զիրենք պաշարեցին.
անոնք ՟ իմ երեսիս առջևն են։
3 Իրենց չարութիւնովը թագաւորը՝
ու իրենց ստութիւններովը իշ-
4 խանները կ'ուրախացընեն։ ՟ Ա-
նոնց ամէնը շնացողներ են՝ հացթուխէն
եփողէն վառուած թոնիրի պէս,
որ անիկայ զանգուածը շաղելէն
ետքը՝ մինչև անոր խմորիլը վա-
5 ռելէն կը դադարի։ Մեր թա-
գաւորին օրը, իշխանները գինիին
տաքութենէն § զանիկայ հիւանդա-
ցուցին". անիկայ իր ձեռքը ծաղր
6 ընողներուն երկընցուց։ Քանզի
անոնք դարանամուտ ըլլալով, ի-
րենց սիրտը թոնիրի պէս պատրաս-
տեցին. անոնց եփողը բոլոր գիշե-
րը կը քնանայ. առտուանց անի-
կայ բոցավառ կրակի պէս կը վա-
7 ռի։ Ամէնը թոնիրի պէս տաք-
ցան, ու իրենց դատաւորները կե-
րան. ՟ անոնց բոլոր թագաւորնե-
րը ՟ ինկան. ՟ անոնց մէջը ինծի
կանչող մը չկայ։
8 Եփրեմը ՟ ժողովուրդներուն հետ
խառնուեցաւ. Եփրեմը չդարձուած
9 շօթի պէս է։ ՟ Անոր զօրութիւնը
օտարները կերան, ու ինքը չգի-
տեր. մազերուն մէջը անգամ ճեր-
մակ ինկաւ, ու ինքը չգիտեր։
10 Եւ ՟ Իսրայէլին հպարտութիւնը՝ իր
երեսին առջևը խոնարհած է. այ-
սու ամենայնիւ ՟ անոնք իրենց Տէր
Աստուծոյն չեն դառնար, ու զանի-
11 կայ չեն փնտռեր։ ՟ Ու Եփրեմը

Ն. Ք. ԳՔ. Իրր 780

՟ Երեմ. Ժա. 9։ Եզեկ. Իբ. 25։ Գլ. Ե. 1, 2։ ՟ Երեմ. Ե. 30։ ՟ Գլ. Դ. 12, 13, 17։ ՟ Երեմ. Ծա. 33։ Յովէլ. Գ. 13։ Յայտ. ԺԴ. 15։ ՟ Սաղ. ԾԶ. 1։

— Գլ. Ե. 1։ Զ. 10։ ՟ Երեմ. ԺԷ. 1։ ՟ Սաղ. Թ. 16։ Առակ. Ե. 22։ ՟ Սաղ. Զ. 8։ ՟ Երեմ. Թ. 2։ § Կամ՝ հիւանդացան. Կատարուեցաւ՝ Իրր 773 ՟ Գլ. Ը. 4։ ՟ Դ Թագ. ԺԵ. 10, 14, 25, 30։ ՟ Ես. ԿԴ. 7։ ՟ Սաղ. ՃԶ. 35։ ՟ Գլ. Ը. 7։ ՟ Գլ. Ե. 5։ ՟ Ես. Թ. 13։ ՟ Տես Գլ. Ժա. 11։

Ն․ Ք․ ԴՓ․ Իւր 780

Տես դ Թագ․ ժն․ 19 ։ ժէ․ 4 ։ Գլ․ ե․ 13 ։ Թ․ 3 ։ ժբ․ 1 ։ Եզեկ․ ժբ․ 13 ։ Ղեւ․ իզ․ 14 ։ Բ Օր․ իը․ 15 ։ Դ Թագ․ ժէ․ 13, 18 ։ Միք․ Զ․ 4 ։

Յոբ․ լե․ 9, 10 ։ Սաղ․ հը․ 36 ։ Երեմ․ գ․ 10 ։ Զաք․ է․ 5 ։

* Կամ՝ ինծի դէմ չարութիւն խորհեցան ։

Գլ․ ժա․ 7 ։ Սաղ․ հը․ 57 ։ Սաղ․ հզ․ 9 ։ Գլ․ Թ․ 3, 6 ։

միամիտ աղաւնիի պէս
եղաւ․ Եգիպտացիները կը կան-
12 չեն, Ասորեստան կ'երթան ։ Երբ
որ անոնք երթան, անոնց վրայ իմ
վարմս պիտի տարածեմ, որ զա-
նոնք երկինքի թռչունի պէս իջեցը-
նեմ, ու զանոնք պատժեմ, ինչ-
պէս որ անոնց ժողովքը լսեր է ։
13 Վա՜յ անոնց, քանզի ինծմէ փա-
խան․ կորուստը անոնց վրայ հաս-
նի, քանզի ինծի դէմ յանցաւոր
եղան․ ու թէեւ զանոնք ես փրկե-
ցի, բայց անոնք ինծի դէմ ստու-
14 թիւններ կը խօսին ։ Ու երբոր ա-
նոնք իրենց անկողիններուն վրայ
կ'ողբային, իրենց սրտովը ինծի
չաղաղակեցին․ անոնք ցորենի ու
գինիի համար կը ժողվուին, ու
15 ինծմէ կ'ապստամբին ։ Եւ թէպէտ
զանոնք խրատեցի, ու անոնց բա-
զուկները զօրացուցի, սակայն * ու
16 ինծի չարութիւն սեպեցին ։ Ա-
նոնք կը դառնան, բայց Բարձրեալին
չէ․ անոնք խաբեբայ աղեղի պէս
են․ անոնց իշխանները իրենց լե-
զուին կատաղութեանը համար
սրով պիտի իյնան․ ասիկայ պիտի
ըլլայ անոնց նախատինքը Եգիպ-
տոսի երկրին մէջ ։

## ԳԼ․ Ը

1 Մարգարէն կործանում կը սպառնայ Իսրայելացւոց՝ իրենց ամբարշտութեանը 5 ու կռապաշտութեանը համար ։

Իւր 760

Գլ․ ե․ 8 ։ Բ Օր․ իը․ 49 ։ Երեմ․ դ․ 13 ։ Ամբ․ ա․ 8 ։ Գլ․ Զ․ 7 ։ Սաղ․ հը․ 34 ։ Գլ․ ե․ 15 ։ Տիտ․ ա․ 16 ։ Գ Թագ․ ժե․ 13, 17, 25 ։ Գլ․ բ․ 8 ։ ժգ․ 2 ։ Երեմ․ ժգ․ 27 ։ Առակ․ իբ․ 8 ։ Գլ․ ժ․ 12, 13 ։ Գլ․ է․ 9 ։ Դ Թագ․ ժէ․ 6 ։

1 Փողը բերանդ դիր․ Թշնամին Տէ-
րոջը տանը վրայ արծիւի պէս
պիտի գայ․ քանզի իմ ուխտս զանց
ըրին․ ու իմ օրէնքիս դէմ յան-
2 ցաւոր եղան ։ Իսրայէլը ինծի
կ'աղաղակէ․ ու կ'ըսէ․ Ո՛վ իմ
Աստուածս՝ մենք քեզ կը ճանչ-
3 նանք ։ Իսրայէլը բարին մերժեց․
զանիկայ թշնամին պիտի հալածէ ։
4 Անոնք թագաւորներ դրին, բայց
ինծմով չէ․ իշխաններ ընտրեցին,
բայց ես չգիտցայ․ իրենց արծա-
թովը ու ոսկիովը իրենց կուռքեր
շինեցին, որպէս զի բնաջինջ ըլլան ։
5 Քու որթդ՝ ո՛վ Սամարիա, զա-
նոնք մերժեց․ իմ բարկութիւնս
անոնց վրայ բորբոքեցաւ․ մինչեւ
երբ անմեղութիւնը ձեռք պիտի
6 չբերեն ։ Քանզի ասիկայ ալ Իս-
րայէլէն է․ զանիկայ արուեստա-
ւորը շինեց․ ուրեմն Աստուած չէ․
հապա կտոր կտոր պիտի ըլլայ Սա-
7 մարիային որթը ։ Քանզի հով
ցանեցին, ու մրրիկ պիտի հնձեն․
անիկայ հասուն ցորեն պիտի չբե-
րէ, ու անոր արդիւնքէն ալիւր պի-
տի չըլլայ․ ու թէ որ ըլլայ ալ,
օտարները պիտի կլլեն զանիկայ ։
8 Իսրայէլը կլլուեցաւ, հիմա ազգե-
րուն մէջ անպիտան ամանի պէս
9 պիտի ըլլան ։ Քանզի անոնք առ-
անձնակեաց վայրենի իշու պէս
Ասորեստան գացին․ Եփրեմը
վարձքով սիրականներ բռնեց ։
10 Թէեւ ազգերէն օգնականներ վարձքով
բռնեն ալ, հիմա զանոնք պիտի
ժողվեմ․ ու իշխանաց թագա-
ւորին բեռէն քիչ մը նեղութիւն
11 պիտի կրեն ։ Քանզի Եփրեմը շատ
սեղաններ շինեց մեղքի համար․ ու
սեղանները իրեն մեղքի համար ե-
12 ղան ։ Իմ օրէնքիս մեծ բաները
անոր գրեցի․ սակայն օտար բանի
13 պէս սեպուեցան ։ Իմ ընծաներուս
զոհերուն համար՝ անոնք միս կը զո-
հեն, ու կ'ուտեն․ բայց Տէրը ա-
նոնց չհաւնիր․ հիմա անոնց ան-
օրէնութիւնը պիտի յիշէ, եւ ա-
նոնց մեղքերուն այցելութիւն պի-
տի ընէ․ անոնք Եգիպտոս պիտի
14 դառնան ։ Քանզի Իսրայէլ իր
Ստեղծողը մոռցաւ, ու մեհեան-
ներ շինեց, եւ Յուդան պարսպաւոր
քաղաքներ շատցուց․ բայց ես
անոր քաղաքները կրակ պիտի
խրկեմ, ու անոր պալատները պի-
տի ուտէ ։

## ԳԼ․ Թ

1-17 Իսրայէլի թշուառութիւնը ու գերութիւնը իրենց զանազան մեղքերուն ու կռապաշտութեանը համար ։

1 Ուրախութիւններուն պէս ցնծու-
թեամբ մի՛ ուրախանար, ո՛վ
Իսրայէլ, քանզի դուն Աստուծմէդ
հեռանալով պոռնկութիւն ըրիր․ ա-
մէն ցորենի կալերուն վրայ պոռնկ-
2 ութեան վարձք սիրեցիր ։ Կալը ու
հնձանը զանոնք պիտի չկերակրէ․
եւ քաղցուն հոն պիտի պակսի ։
3 Անոնք Տէրոջը երկրին մէջ պիտի
չբնակին․ հապա Եփրեմը Եգիպ-
տոս պիտի դառնայ, ու Ասորես-
տանի մէջ պիղծ բաներ պիտի ու-
4 տեն ։ Տէրոջը գինիի նուէր պիտի
չմատուցանեն, եւ անոր ընդունելի
պիտի չըլլան․ անոնց զոհերը սգա-
ւորաց հացին պէս պիտի ըլլան ի-
րենց․ զանիկայ ամէն ուտողները
պիտի պղծուին․ քանզի անոնց հա-
ցը՝ իրենց անձերուն համար է,
5 Տէրոջը տունը պիտի չմտնէ ։ Ի՞նչ
պիտի ընէք հանդիսաւոր օրը, ու
6 Տէրոջը տօնին օրը ։ Քանզի ահա
կործանումէն փախչելով կ'երթան․
Եգիպտոսը զանոնք պիտի ժողվէ․
Մեմփիսը զանոնք պիտի թաղէ․
անոնց արծաթին ցանկալի
տեղուանքը եղինճը պի-
տի ժառանգէ․ անոնց վրաններուն

13 ։ Բ Օր․ իզ 14 ։ Գլ․ բ․ 11 ։ Գլ․ ե․ 10 ։ Հմր 3 ։ Ես․ ե․ 6 ։ լբ․ 13 ։ լգ․ 13 ։ Գլ․ ժ․ 8 ։

Ն․ Ք․ ԴՓ․ Իւր 760

Իւր 771

Երեմ․ իբ․ 28 ։ խբ․ 38 ։ Երեմ․ բ․ 24 ։ Դ Թագ․ ժե․ 19 ։ Ես․ Լ․ 6 ։ Եզեկ․ ժզ․ 33, 34 ։ Եզեկ․ ժզ․ 37 ։ Գլ․ Ժ․ 10 ։

† Կամ՝ թագաւորին ու իշխանաց բեռէն քիչ մը պիտի հանգստանան ։

Ես․ Ժ․ 8 ։ Եզեկ․ իզ․ 7 ։ Դան․ Բ․ 37 ։ Գլ․ ժբ․ 11 ։ Բ Օր․ դ․ 6, 8 ։ Սաղ․ ճժԹ․ 18 ։ ճխէ․ 19, 20 ։ Երեմ․ է․ 21 ։ Զաք․ է․ 6 ։ Երեմ․ ժդ․ 10, 12 ։ Գլ․ ե․ 6 ։ Թ․ 4 ։ Ամով․ ե․ 22 ։ Գլ․ Թ․ 9 ։ Ամով․ Ը․ 7 ։ Բ Օր․ իը․ 68 ։ Գլ․ Թ․ 3, 6 ։ ժա․ 5 ։ Բ Օր․ լբ․ 18 ։ Գ Թագ․ ժբ․ 31 ։

‡ Կամ՝ պալատներ

Երեմ․ ժէ․ 27 ։ Ամով․ բ․ 5 ։

Գլ․ դ․ 12 ։ ե․ 4, 7 ։ Գլ․ բ․ 12 ։ Գլ․ բ․ 9 ։ 12 ։ Եբր․ սաե ։ Ղեւ․ իե․ 23 ։ Երեմ․ բ․ 7 ։ ժզ․ 18 ։ Գլ․ Ը․ 13 ։ Տես Գլ․ ժա․ 5 ։ Դ Թագ․ ժէ․ 6 ։ Տես Գլ․ ժա․ 11 ։ Եզեկ․ դ․ 13 ։ Դան․ ա․ 8 ։ Գլ․ դ․ 4 ։ Երեմ․ գ․ 20 ։ Գլ․ բ․

Ն. Ք. ԳՖ. Իրր 760

7 մէջը փուշեր պիտի բուսնին։ Այցե-
լութեան օրերը հասան, հատուց-
ման օրերը հասան. Իսրայէլը պի-
տի գիտնայ. քու անօրէնութեա-
նըդ շատութեանը համար, և քու
մեծ հակառակութեանդ համար,
մարգարէն՝ անմիտ, ու հոգևոր
8 մարդը խենթ եղաւ։ Եփրեմը իմ
Աստուծոյս կը դիտէ. մարգարէն՝
իր ամէն ճամբաներուն մէջը որո-
գայթ կը լարէ, ու իր Աստուծոյն
տանը մէջ հակառակութեան պատ-
9 ճառ է։ Գաբաայի օրերուն պէս
խիստ շատ ապականեցան. Ա-
նոնց անօրէնութիւնը պիտի յի-
շէ, ու անոնց մեղքերուն այցելու-
թիւն պիտի ընէ։
10 Իսրայէլը՝ անապատի մէջ եղող
խաղողի պէս գտայ. ձեր հայրերը
թզենիին առջի կանխահաս պտու-
ղին պէս տեսայ. սակայն անոնք
Բէեղփեգովր մտան, ու իրենց ան-
ձը ամօթալից բանի մը համար
զատեցին, և իրենց սիրած բանին
11 պէս լիրբ ալ պիղծ եղան։ Եփ-
րեմին փառքը՝ ծնունդէն, և ար-
գանդէն, ու յղութենէն թռչունի
12 պէս պիտի թռչի։ Թէև իրենց
տղաքները մեծցնեն, զանոնք
մարդէ զուրկ պիտի թողում. Նաև
վա՜յ անոնց՝ երբոր զանոնցմէ քա-
13 շուիմ։ Եփրեմ ալ՝ Ինչպէս որ
Տիւրոսը տեսայ, զուարճալի տեղ
մը տնկուած էր. բայց Եփրեմ իր
տղաքները մեռցնողին պիտի հա-
14 նէ։ Տո՛ւր անոնց՝ ով Տէր. ի՞նչ
պիտի տաս. անոնց վիժող արգանդ,
15 ու չոր ստինքներ տուր։ Անոնց
բոլոր չարութիւնը Գաղգաղայի
մէջ է. քանզի հոն անոնցմէ զզուե-
ցայ. անոնց չար գործքերուն
պատճառաւը՝ զանոնք իմ տունէս
պիտի վռնտեմ. զանոնք մէյմըն ալ
պիտի չսիրեմ. անոնց բոլոր իշ-
16 խանները ապստամբներ են։ Եփ-
րեմը զարնուեցաւ. անոնց արմատը
չորցաւ. պտուղ պիտի չտան.
Եթէ որ անոնք ծնանին ալ, անոնց
արգանդին ցանկալի պտուղներն ալ
պիտի մեռցնեմ։
17 Իմ Աստուածս զանոնք պիտի
մերժէ. քանզի անոր մտիկ չըրին.
ու ազգերու մէջ թափառական
պիտի ըլլան։

Եզեկ. ԺԳ. 3. Միք. Բ. 11. Սոփ. Գ. 4.
Դատ. ԺԹ. 22.
Եսա. ԼԱ. 6. Գլ. Ժ. 9.
Գլ. Ը. 13.
Եսա. ԻԸ. 4. Միք. Է. 1.
Թուոց. ԻԵ. 3. Սաղ. ՃԶ. 28.
Գլ. Դ. 14.
Երեմ. ԺԱ. 13.
Սաղ. ՃԱ. 12. Եզեկ. Ի. 8. Ամով. Դ. 5.
Յոբ. ԻԷ. 14.
Բ Օր. ԻԲ. 41. 62.
Բ Օր. ԼԱ. 17. Դ Թագ. ԺԷ. 18. Գլ. Ե. 6.
Տես Թագ. ԻԸ. 15. 16.
Տես Եզեկ. ԻԴ. ԻԵ. ԻԸ. Հռոմ 16. Գլ. ԺԳ. 16.
Գլ. Դ. 15. ԺԲ. 12.
Գլ. Ա. 6.
Եսա. Ա. 23.
Հռոմ 13.
Բ Օր. ԻԸ. 64. 65.

## ԳԼ. Ժ

1 Իսրայէլին յանդիմանութիւն ու սպառնալիք կ'ըլլայ՝ իր ամբարշտութեանը ու կռապաշտութեանը համար։

Իրր 740

1 Իսրայէլ լայնատարած որթ մըն
է. իրեն համար պտուղ կը բերէ.
իր պտուղին շատութեանը չափ
սեղաններ շատցուց. իր երկրին
գեղեցկութեանը պէս՝ գեղեցիկ
2 կուռքեր շինեցին։ Անոնց սիրտը
փոփոխական է. հիմա յանցաւոր
պիտի ըլլեն. անիկայ՝ անոնց սե-
ղանները պիտի փլցնէ. անոնց
3 կուռքերը պիտի աւրէ։ Վասն զի
հիմա անոնք պիտի ըսեն. Մենք
թագաւոր չունինք, քանզի Տէրոջ-
մէ չվախցանք. ու թագաւորը մե-
4 զի ի՞նչ պիտի ընէ։ Սուտ ըրած
ատեննին՝ սուտ երդում ընելով
խօսքեր խօսեցան. ու դատաստա-
նը՝ արտին ակօսներուն մէջը թու-
նաւոր խոտերու պէս պիտի բուսնի։
5 Սամարիայի բնակիչները՝ Բեթա-
ւանի որթերուն պատճառաւը
պիտի վախնան. քանզի անոր վրայ
անոր ժողովուրդը սուգ պիտի ընէ,
ու անոր քուրմերը անոր փառա-
ցը համար պիտի դողան. քանզի
անիկայ իրմէ գերութեան կ'երթայ։
6 Անիկայ ալ Ասորեստան պիտի տա-
րուի Յարեբ թագաւորին պար-
գև ըլլալու. Եփրեմը ամօթ պիտի
կրէ, ու Իսրայէլը իր խորհուրդէն
7 պիտի ամչնայ։ Սամարիայի
թագաւորը՝ ընաջինջ պիտի ըլլայ,
ջուրի երեսին վրայ եղող փրփուրին
8 պէս։ Եւ Աւենի բարձր տեղուան-
քը՝ Իսրայէլին մեղքը՝ աւերակ պի-
տի ըլլան. անոնց սեղաններուն վը-
րայ փուշ ու տատասկ պիտի բուսա-
նի. և լեռներուն պիտի ըսեն. Մեզ
ծածկեցէք. ու բլուրներուն՝ Մեր
վրա՛յ ինկէք։
9 Գաբաայի օրերէն ՚ի վեր մեղք
գործեցիր՝ ով Իսրայէլ. հոն կայ-
նեցան [illegible]. Գաբաայի
մէջ չարութեան որդւոցը դէմ
եղած պատերազմը անոնց չհասաւ։
10 Զանոնք խրատելու կը ցանկամ.
ու անոնց վրայ ժողովուրդներ
պիտի ժողվուին, երբոր իրենց եր-
կու անօրէնութեանցը համար
11 կապուին։ Ու Եփրեմը երինջ մըն
է, որ սորված է ու կը սիրէ ցորեն
ծեծել. բայց ես անոր պարանոցին
գեղեցկութեանը վրայ լուծ մը ան-
ցուցի. Եփրեմը կառքի պիտի լը-
ծեմ. Յուդան պիտի հերկէ. Յա-
կոբը անոր կոշտերը պիտի տափանէ։
12 Ձեզի արդարութիւնով ցանե-
ցէք, ու ողորմութիւնով հնձե-
ցէք, և չմշակուած երկիրը հեր-
կեցէք. քանզի Տէրը փնտռելու
ատեն է, մինչև որ ինքը գայ, ու
ձեր վրայ արդարութիւն տեղայ։
13 Ամբարշտութեամբ հերկեցիք,
ու անօրէնութիւն հնձեցիք. ստու-
թեան պտուղը կերաք. քանզի
դուն քու ճամբուդ, և քու զօ-
րաւորներուդ բազմութեանը ա-
14 պաւինեցար։ Ուստի քու ժո-

Գլ. Բ. 11. ԺԲ. 12.

Ն. Վ. ԳՖ. Իրր 740
Գլ. Ը. 4.
Դ Թագ. ԺԲ. 21. Տես Մառկ. 24.
Գլ. Գ. 4. ԺԱ. 5. Միք. Դ. 9. Հռոմ 7.
Տես Բ Օր. ԻԹ. 18. Ամով. Ե. 7. Գ. 12. Գործ. Ը. 23. Եբր. ԺԲ. 15.
Գլ. Դ. 15.
Դ Թագ. ԺԲ. 28. 29. Գլ. Ը. 5. 6.
Դ Թագ. ԻԳ. 5. Սոփ. Ա. 4.
Դ Թագ. Դ. 21. 22. Գլ. Թ. 11.
Գլ. Ե. 13.
Գլ. ԺԱ. 6.
Հռոմ 3. 15.
Կամ՝ Սամարիան իր թագաւորովը
Գլ. Դ. 15.
Բ Օր. Թ. 21. Դ Թագ. ԺԲ. 30.
Գլ. Թ. 6.
Եսա. Բ. 19. Ղուկ. ԻԳ. 30. Յայտ. Զ. 16. Թ. 6.
Գլ. Թ. 9.
Տես Դատ. Ի.
Բ Օր. ԻԸ. 63.
Երեմ. ԺԶ. 16. Եզեկ. ԻԳ. 46. 47. Գլ. Ը. 10.
Կամ՝ ակօսներուն մէջ
Երեմ. Դ. 11. Միք. Գ. 13.
Երեմ. Դ. 3.
Յոբ. Դ. 8. Առակ. ԻԲ. 8. Գաղ. Զ. 7. 8.
Գլ. ԺԳ. 16.

ժողովուրդներուդ մէջը խռովութիւն
պիտի ելլէ. և քու բոլոր բերդերդ
պիտի կործանին, ինչպէս որ Սաղ-
մանն՝ պատերազմին օրը Բեթար-
բէլը կործանեց. մայր որ զաւակներուն հետ
տղոցը վրայ պետինը զարնուեցաւ։
15 Բեթէլը ձեզի ասոր պէս պիտի ը-
նէ, ձեր չափազանց չարութեանը
համար. արշալոյսին ատենը Իսրա-
յէլի թագաւորը բոլորովին բնա-
ջինջ պիտի ըլլայ։

## ԳԼ. ԺԱ

1 Աստուծոյ բարութիւններուն փոխարէն Իս-
րայէլին ապերախտութիւնը։ 5 Աստուծոյ
դատաստանը, 8 և ժողովուրդին վրայ ցանե-
ցած գութը։

1 Երբոր Իսրայէլը մանուկ էր,
զանիկայ կը սիրէի, ու իմ
որդիս Եգիպտոսէն կանչեցի։
2 Որչափ որ զանոնք կանչեցին, այն-
չափ անոնց երեսէն գացին. Բա-
ահալիմներուն զոհ մատուցին, ու
3 կուռքերուն խունկ ծխեցին։ Ու
Եփրեմը ես քալեցուցի. զանոնք
իրենց թեւերէն կը բռնէի. սակայն
չգիտցան թէ զիրենք բժշկողը ես
4 եմ։ Զանոնք մարդու չուաններ-
րով, սիրոյ կապերով քաշեցի, ու
անոնց պարանոցէն լուծը հա-
նողներու պէս եղայ իրենց, և զա-
նոնց հանդարտութեամբ կերցուցի։
5 Անիկայ Եգիպտոսի երկիրը պիտի
չդառնայ. հապա Ասորեստանցին
պիտի ըլլայ անոր թագաւորը.
6 քանզի դառնալ չուզեցին։ Եւ
անոր քաղաքներուն վրայ սուրը
պիտի յարձակի, ու անոր նիզ-
կաւները պիտի ուտէ հատցընէ,
անոնց խորհուրդներուն համար։
7 Եւ իմ ժողովուրդս ինծի դէմ
ապստամբելու հակամիտեալ է. ու
թէև անոնք Բարձրելոյն կը հրա-
ւիրուին, սակայն բնաւ մէկը զանիկայ
չբարձրացըներ։
8 Քեզ ի՞նչպէս տամ՝ ով Եփ-
րեմ, քեզ ի՞նչպէս յանձնեմ՝ ով
Իսրայէլ. քեզ ինչո՞ւ Ադմայի
պէս ընեմ, քեզ ինչո՞ւ Սեբոյիմի
պէս դնեմ. իմ սիրտս ներսի դիս
կը խռովի, կարեկցութիւններս
9 ալ միանգամայն կը բռնկին։ Իմ
սաստիկ բարկութիւնս 'ի գործ
պիտի չդնեմ. Եփրեմը աւրելու
պիտի չդառնամ. Քանզի ես Աս-
տուած եմ, և ոչ թէ մարդ. քու
մէջդ եղող Սուրբը ես եմ, ու բար-
10 կութեամբ պիտի չգամ։ Տէրոջը
ետևէն պիտի երթան. Անիկայ
առիւծի պէս պիտի գոչէ. երբոր
անիկայ գոչէ, արևմուտքի կողմէն
տղաքները արտորնօք պիտի գան։
11 Անոնք Եգիպտոսէն թռչունի պէս՝
ու Ասորեստանի երկրէն աղաւնիի
պէս արտորնօք պիտի գան. ու
զանոնք իրենց տուներուն մէջը պի-
տի բնակեցընեմ՝ կ'ըսէ Տէրը։

## ԳԼ. ԺԲ

1 Եփրեմին, Յուդային, ու բոլոր Իսրայէլին
յանդիմանութիւն մը։ 4 Մարգարէն առջի
շնորհքները յիշելով՝ ապաշխարելու կը յոր-
դորէ զանոնք։ 8 Եփրեմի մեղքերը բարկու-
թեան կը գրգռեն զԱստուած։

1 Եփրեմը զիս կը պաշարէ ստու-
թեամբ, ու Իսրայէլի տունը՝
նենգութեամբ. բայց Յուդան տա-
կաւին Աստուծով կը տիրէ, ու
սուրբերուն մէջը հաւատարիմ է։
2 Եփրեմը հով կը ճարակէ, ու ա-
րևելեան հովին ետևէն կը վազէ.
ամէն օր ստութիւնը ու յափշտա-
կութիւնը կը շատցընէ. Ասորես-
տանի հետ դաշնակցութիւն կ'ը-
նեն, ու Եգիպտոս եղ կը տանին։
3 Տէրը Յուդային հետ ալ վէճ ունի.
ու Յակոբին՝ անոր ճամբաներուն
համեմատ այցելութիւն պիտի ընէ,
ու անոր գործոցը համեմատ հա-
4 տուցում պիտի ընէ անոր։ Անի-
կայ արգանդի մէջ իր եղբօրը գար-
շապարէն բռնեց, և իր ուժովը
Աստուծոյ հետ ըմբշամարտեցաւ։
5 Ու հրեշտակին հետ ըմբշամարտե-
ցաւ, և յաղթեց. լացաւ, և
անկէ շնորհք խնդրեց. զանիկայ
Բեթէլի մէջ գտաւ. ու հոն մեզի
6 հետ խօսեցաւ Անիկայ, Այսինքն զօ-
րաց Տէր Աստուածը, որուն յիշա-
7 տակը Եհովայ է։ Ուրեմն դուն
քու Աստուծոյդ դարձիր, ողոր-
մութիւն ու իրաւունք պահէ, ու
միշտ քու Աստուծոյդ յուսա։
8 Եփրեմը վաճառական է. անոր
ձեռքը նենգութեան կշիռ կայ.
անիկայ հարստահարելը կը սիրէ։
9 Ու Եփրեմը ըսաւ. Իրաւցընէ հա-
րըստացայ. ինծի ստացուածք գը-
տայ. իմ ամէն վաստակներուս
կողմէ՝ անօրէնութիւն պիտի չգըտ-
10 նեն իմ վրաս, որ մեղք ըլլայ։ Իսկ
ես Եգիպտոսի երկրէն 'ի վեր քու
Տէր Աստուածդ եմ. Քեզ տակա-
ւին վրաններու մէջ պիտի բնակե-
ցընեմ՝ հանդիսաւոր տօնի օրերուն
11 պէս։ Եւ մարգարէներուն միջո-
ցովը խօսեցայ, ու տեսիլքները
շատցուցի, ու մարգարէներուն
ձեռքովը նմանութիւններ գործա-
12 ծեցի։ Գաղաադը անօրէն
է. յիրաւի ունայնութիւն եղան.
Գաղգաղայի մէջ արջառներ մոր-
թեցին. անոնց սեղանները ան-
գամ արտի ակօսներուն վրայ եղող
քարակոյտներու պէս է։
13 Եւ Յակոբ Ասորւոց դաշտը փա-
խաւ, ու Իսրայէլ կնկան համար

ծառայութիւն ըրաւ, ու կնկան
14 համար հովիւ եղաւ ։ Եւ Տէրը
մէկ մարգարէով Եգիպտոսէն հա-
նեց Իսրայէլը. ու անիկայ մէկ մար-
15 գարէով պահպանուեցաւ ։ Եփ-
րեմը դառնապէս բարկացուց զԱս-
տուած. անոր համար անոր արիւն-
ները անոր վրայ պիտի ձգէ, ու
անոր Տէրը անոր նախատինքը ա-
նոր պիտի հատուցանէ ։

ԳԼ. ԺԳ

1 Եփրեմին փառքը՝ կռապաշտութեան պատ-
ճառով կ՚ոչնչանայ ։ 5 Անոնց անգդամու-
թեանը համար Աստուած կը բարկանայ ։ 9
Աստուծոյ ողորմութեանը խոստմունքը ։ 15
Ապստամբութեան պատիժը ։

1 Եփրեմը՝ երբոր դողալով կը խօ-
սէր, Իսրայէլի մէջ բարձրա-
ցաւ. բայց երբոր Բահաղով յան-
2 ցաւոր եղաւ, մեռաւ ։ Ու հիմա
նորէն մեղք կը գործեն, ու իրենց
համար իրենց արծաթէն՝ իրենց
խելքովը ձուլածոյ կուռքեր,
արձաններ կը շինեն, որոնց ամէնը
արուեստաւորի գործքեր են. իրենք
անոնց համար՝ կ՚ըսեն. զոհ ընող
մարդիկը թող որթերը համբու-
3 րեն ։ Անոր համար անոնք առա-
ւօտեան ամպին պէս, ու կանուխ
իջած վաղանցիկ ցօղին պէս, կա-
լէն փոթորիկով վերցուած մղեղին
պէս, ու ծխնելոյզէն ելած ծուխին
4 պէս պիտի ըլլան ։ Սակայն ես
Եգիպտոսի երկրէն ՚ի վեր քու Տէր
Աստուածդ եմ. ու ինծմէ ուրիշ
աստուած չգիտնաս. քանզի ինծմէ
5 ուրիշ Փրկիչ մը չկայ ։ Ես քեզ
անապատի մէջ՝ խիստ անջուր
6 երկրի մէջ ճանչցայ ։ Անոնք՝ ի-
րենց արօտին համեմատ կշտացան,
կշտացան, ու անոնց սիրտը բարձ-
րացաւ, անոր համար զիս մոռցան ։
7 Ուստի անոնց՝ առիւծի պէս պիտի
ըլլամ. ճամբուն քովը ինձի պէս
8 դարանամուտ պիտի ըլլամ ։ Իր
ձագերը կորսնցուցած արջու պէս՝
անոնց պիտի հանդիպիմ, ու ա-
նոնց սրտին վարագուրը պիտի պա-
տառեմ, և զանոնք հոն առիւծի
պէս պիտի ուտեմ. զանոնք դաշ-
տի գազանը պիտի պատառէ ։
9 Դուն քեզ կորսնցուցիր՝ ով Իս-
րայէլ. բայց քու օգնութիւնդ
10 ինծմէ է ։ Հիմա ո՞ւր է քու թա-
գաւորդ, որ քու բոլոր քաղաք-
ներուդ մէջ քեզ ազատէ. և ո՞ւր
են անոր դատաւորները, որոնց
համար ըսիր թէ՝ Ինծի թա-
11 գաւոր ու իշխաններ տուր ։ Իմ
բարկութեամբս քեզի թագաւոր
տուի, ու իմ սրտմտութեամբս
12 առի ։ Եփրեմին անօրէնութիւնը
կապուած, անոր մեղքը պահուած
13 է ։ Անոր վրայ՝ ծննդական կնոջ
ցաւերը պիտի հասնին. անիկայ
իմաստուն տղայ չէ. ապա թէ
ոչ՝ արգանդին բերանը այսչափ ա-
14 տեն չէր կենար ։ Զանոնք գե-
րեզմանին ձեռքէն պիտի փրկեմ.
զանոնք մահուանէ պիտի ազատեմ.
Քու ժանտախտդ պիտի ըլլամ՝
ով մահ. քու աւերումդ պիտի
ըլլամ՝ ով գերեզման. Իմ աչքե-
րէս զղջումը պիտի ծածկուի ։
15 Թէև անիկայ եղբայրներուն մէջը
պտղաբեր ըլլայ, արևելեան հովը
պիտի գայ, անապատէն Տէ-
րոջը հովը պիտի ելլէ. և անոր
աղբիւրը պիտի ցամքի, ու անոր
աղբերակը պիտի չորնայ. անիկայ
բոլոր ցանկալի ամաններուն գան-
16 ձը պիտի կողոպտէ ։ Սամարիան
աւերակ պիտի ըլլայ. քանզի իր
Աստուծմէն ապստամբեցաւ. զա-
նոնք սրով պիտի իյնան. անոնց
պզտիկ տղաքը գետինը պիտի զար-
նուին, ու յղի կնիկները պիտի
ճեղքուին ։

ԳԼ. ԺԴ

1 Ապաշխարելու յորդորանք մը ։ 4 Աստուծոյ
շնորհացը խոստմունքը ։

1 Ով Իսրայէլ՝ քու Տէր Աստուա-
ծոյդ դարձիր. քանզի քու ան-
օրէնութեանդ պատճառաւ գլո-
2 րեցար ։ Ձեր հետը խօսքեր ա-
ռէք, ու Տէրոջը դարձէք. անոր
ըսէք. Ամէն անօրէնութիւնը վեր-
ցուր, և մեզ բարութեամբ ընդու-
նէ, ու մեր շրթունքներուն զո-
3 հերը պիտի մատուցանենք ։ Ա-
սորեստանցին մեզ պիտի չփրկէ.
ձիերու վրայ պիտի չհեծնենք,
ու մեր ձեռացը գործ-
քին՝ Մեր Աստուածն ես՝ պիտի
չըսենք. քանզի որբը քեզմէ ողոր-
մութիւն կը գտնէ ։
4 Անոնց ապստամբութիւնը պիտի
բժշկեմ. զանոնք ձրիապէս պիտի
սիրեմ. քանզի իմ բարկութիւնս
5 անոնցմէ դարձաւ ։ Իսրայէլին՝
ցօղի պէս պիտի ըլլամ. անիկայ
շուշանի պէս պիտի ծաղկի, և իր
արմատները Լիբանանի եղեւիններուն
6 պէս պիտի արձակէ ։ Անոր ոստե-
րը պիտի տարածուին. ու անոր
վայելչութիւնը ձիթենիի պէս պի-
տի ըլլայ, և անոր անուշահոտու-
թիւնը Լիբանանի պէս պիտի ըլ-
7 լայ ։ Անոր հովանիին տակը նստ-
տողները պիտի դառնան. ցորենի
պէս պիտի կենդանանան, ու որթի
պէս պիտի ծաղկին. անոր յիշա-
տակը Լիբանանի գինիին պէս պի-
8 տի ըլլայ ։ Եփրեմը պիտի ըսէ

Ն . Ք . ԴՔ . իրր 725

ա Հմր 3 ։ բ Երեմ . լա . 18 ։ գ Յակ . ա . 17 ։ դ Սաղ . ծէ . 43 ։ Երեմ . թ . 12 ։ Դան . ժբ . 10 ։ Յով . ը . 47 ։ Ժը . 37 ։

կուռքերու հետ՝ ա՛լ ի՞նչ բան ու-
նիմ ։ Ես անոր խնդրուածքը
լսեցի , ու անոր խնամք տարի . ես
կանանչ մայր ծառի պէս եմ . Քու
պտուղդ ինծմէ է ։
9 Ո՞վ է իմաստուն , որ ասոնք
հասկնայ , խոհեմ , որ ասոնք
գիտնայ . քանզի Տէրոջը ճամբա-
ները շիտակ են , ու արդարները ա-
նոնց մէջը պիտի քալեն . բայց
յանցաւորները անոնց մէջը պիտի
գլորին ։

Ն . Ք . ԴՔ . իրր 725

ե Առակ . ժ . 29 ։ Ղուկ . բ . 34 ։ բ Կոր . բ . 16 ։ ա Պետ . բ . 7 , 8 ։

---

# ՄԱՐԳԱՐԷՈՒԹԻՒՆ ՅՈՎԷԼԻ

---

Ն . Ք . ԴՔ . իրր 800

ա Գլ . բ . 2 ։ բ Սաղ . ծը . 4 ։ գ Օր . իը . 38 ։ Գլ . բ . 25 ։ դ Ես . լբ . 10 ։ ե Առակ . լ . 25 , 26 , 27 ։ Գլ . բ . 2 , 11 , 25 ։ զ Յայտ . թ . 8 ։ է Ես . ե . 6 ։ ը Ես . իբ . 12 ։ թ Առակ . բ . 17 ։ ժ Հմր 13 ։ Գլ . բ . 14 ։ ի Երեմ . ժբ . 11 ։ Ժդ . 2 ։ լ Ես . իդ . 7 ։ Հմր 12 ։ ծ Երեմ . ժդ . 3 , 4 ։

## ԳԼՈՒԽ Ա

1 Յովէլ Աստուծոյ զանազան դատաստանները յայտնելով՝ կը յորդորէ ժողովուրդը որ զգուշութիւն ընեն անոնց , 8 սուգ ընեն , 14 և ծոմապահութեան ու ողբալու օր մը սահմանեն ։

1 Տէրոջը խօսքը՝ որ եղաւ Փա-
2 թուէլի որդւոյն Յովէլին ։ Լսե-
ցէ՛ք ասիկայ՝ ո՛վ ծերեր . ու ա-
կանջ տուէ՛ք՝ ո՛վ երկրիս բոլոր
բնակիչները . ա Միթէ ասանկ բան
մը եղա՞ւ ձեր օրերուն մէջ , կամ
3 ձեր հարցը օրերուն մէջ ։ բ Ասի-
կայ ձեր որդւոցը պատմեցէ՛ք , ու
ձեր որդիքը իրենց որդւոցը , ու ա-
նոնց որդիքը յետագայ ազգին
4 պատմեն ։ գ Խածնիճին թողածը՝
մարախը կերաւ , ու մարախին թո-
ղածը՝ ջորեակը կերաւ , ու ջորեա-
կին թողածը՝ թրթուրը կերաւ ։
5 Արթընցէ՛ք՝ ո՛վ գինովներ , ու
լացէ՛ք , և դուք ամէնքդ՝ ո՛վ գինի
խմողներ , սուգ բռնեցէ՛ք քաղց-
րուին համար , դ քանզի ձեր բերնէն
6 կտրեցաւ ։ Վասն զի իմ երկրիս
վրայ ե մէկ զօրաւոր ու անթիւ ազգ
մը ելաւ . զ անոր ակռաները առիւ-
ծի ակռաներ են , ու անիկայ մա-
տակ առիւծի ժանիքներ ունի ։
7 Անիկայ է իմ որթս աւրեց , և իմ
թզենիս կոտրտեց . զանիկայ բո-
լորովին մերկացուց ու վար ձգեց .
անոր ուռերը ճերմըկցան ։
8 ը Ո՛ղբ ըրէ կոյսի մը պէս , որ թ իր
մանկութեան էրկանը համար քուրձ
9 հագած է ։ ժ Հացի ընծան ու
թափելու նուէրը Տէրոջը տունէն
կտրեցաւ . Տէրոջը պաշտօնը կա-
տարող քահանաները սուգ կը
10 բռնեն ։ Արտերը աւրեցան . երկ-
իրը սուգ կը բռնէ . քանզի ցորե-
նը աւրեցաւ . նոր գինին չորցաւ .
եղը պակսեցաւ ։
11 ի Ամչցէ՛ք՝ ո՛վ լ երկրագործներ ,
ողբացէ՛ք՝ ո՛վ այգեգործներ , ցո-
րենին համար , և գարիին
համար . քանզի արտերուն բերքը
12 կորսուեցաւ ։ ծ Որթը չորցաւ , ու
թզենին նուաղեցաւ . նռնենին ,
արմաւենին , խնձորենին , արտին
բոլոր ծառերը չորցան . այսպէս
մարդոց որդիներէն ուրախութիւ-
նը վերցաւ ։
13 կ Քո՛ւրձ հագէ՛ք , ու ողբացէ՛ք ,
ո՛վ քահանաներ . հառաչեցէ՛ք ,
ո՛վ սեղանին պաշտօնեաները . ե-
կէ՛ք՝ ո՛վ իմ Աստուծոյս ծառանե-
րը , գիշերը քուրձերու մէջ ան-
ցուցէ՛ք . քանզի ձ հացի ընծան ու
թափելու նուէրը՝ ձեր Աստուծոյն
14 տունէն վերցան ։ ղ Ծոմապահու-
թեան օր որոշեցէ՛ք . ճ հանդիսա-
ւոր ժողով քարոզեցէ՛ք . ծերերը ,
և մ երկրին բոլոր բնակիչները՝ ձեր
Տէր Աստուծոյն տունը ժողվեցէ՛ք ,
ու Տէրոջը աղաղակեցէ՛ք ։
15 յ Վա՜յ այն օրուան համար . քան-
զի ն Տէրոջը օրը մօտ է , ու Ամենա-
կարողէն եկած աւերման պէս պիտի
16 գայ ։ Ահա մեր աչքին առջևէն՝
կերակուրը , մեր Աստուծոյն տու-
նէն՝ շ ուրախութիւնը ու ցնծու-
17 թիւնը կտրեցաւ ։ Հողին չոր կոշ-
տերուն տակը սերմերը փտեցան .
շտեմարանները ամայի մնացին .
ամբարները աւրեցան . քանզի ցո-
18 րենը խորշակահար եղաւ ։ ո Ի՜նչ-
պէս կը հեծեն անասունները . ար-
ջառներուն նախիրները աստան-
դական կը պտըտին . քանզի անոնց
համար արօտ չկայ . ոչխարներուն
19 հօտերն ալ կորսուեցան ։ Քեզի
պիտի աղաղակեմ , ո՛վ Տէր .
քանզի չ անապատին արօտները՝
կրակը կերաւ , ու դաշտին բոլոր
20 ծառերը՝ բոցը այրեց ։ Դաշտին
անասունները անգամ Քեզի կը
նային . քանզի պ ջուրերուն վտակ-
ները ցամքեր են , ու անապատին
արօտները կրակը կերեր է ։

Ն . Ք . ԴՔ . իրր 800

կ Հմր 10 ։ հ Ես . իդ . 11 ։ Երեմ . խը . 33 ։ Տես Սաղ . դ . 7 ։ Ես . թ . 3 ։ ձ Հմր 8 ։ Երեմ . դ . 8 ։ ղ Հմր 9 ։ ճ Բ Մն . ի . 3 , 4 ։ Գլ . բ . 15 , 16 ։ մ Ղև . իգ . 36 ։ յ Բ Մն . ի . 13 ։ ն Երեմ . լ . 7 ։ շ Ես . ժգ . 6 , 9 ։ Գլ . բ . 1 ։ ո Տես Բ Օր . ժբ . 6 , 7 ։ Ժզ . 11 , 14 , 15 ։ չ Ովս . դ . 3 ։ պ Սաղ . ծ . 15 ։ ջ Երեմ . թ . 10 ։ Գլ . բ . 3 ։ ռ Յոբ . լը . 41 ։ Սաղ . ճդ . 21 ։ Ճխե . 15 ։ ս Գ Թագ . ժէ . 7 ։ Ժը . 5 ։

## ԳԼ . Բ

1 Մարգարէն կը յորդորէ Սիոնին՝ Աստուծոյ դատաստանին սպառնալիքովը . 12 կը քա-

դորէ ժողովուրդը որ սպառնացին . 15 ու ծոմ պահեն . 18 և անոնց օրհնութիւն մը կը խոստանայ . 21 Սիոնը կը մխիթարէ թէ հիմակուան , 28 և թէ գալու օրհնութիւններով .

1 Սիոնի մէջ փող հնչեցուցէք , և
իմ սուրբ լեռանս վրայ աղաղակ
արարութեան ձայն վերցուցէք .
երկրին բոլոր բնակիչները դողան .
քանզի Տէրոջը օրը կու գայ ,
2 վասն զի մօտ է , Խաւարի ու մէ-
գի օրը՝ ամպի ու մառախուղի օրը .
ինչպէս որ արշալոյսը լեռներուն
վրայ կը տարածուի , այնպէս ու
մէկ շատուոր ու զօրաւոր ժողո-
վուրդ մը պէտք գայ , Նոր 'ի յաւի-
տենից անոր նմանը չէ եղած ., ու
անկէ ետքը մէյմըն ալ պիտի չըլլայ
յետագայ ժամանակին մէջ՝ դարէ
3 'ի դար ։ Անոր առջեւէն կրակը
պիտի սպառէ , ու ետեւէն բոցը պի-
տի այրէ . երկիրը անոր առջեւը
Եդեմի դրախտին պէս , և անոր
ետեւը ամայի անապատ պիտի ըլ-
լայ . ու անկէ բան մըն ալ պիտի
չազատի ։
4 Անոնց կերպարանքը ձիերու
կերպարանքին պէս է . ու անոնք
ձիաւորներու պէս պիտի վազեն ։
5 Լերանց գլուխներուն վրայ կառ-
քերու ձայնին պէս , յարդը ու-
տող կրակի բոցին ձայնին պէս .
պատերազմի շարուած և զօրա-
ւոր ժողովուրդի պէս պիտի ցատ-
6 կեն ։ Անոնց երեսէն ժողովուրդ-
ները պիտի տագնապին . ա-
մէն երեսները գոյներնին պիտի նե-
7 տեն ։ Անոնք զօրաւորներու պէս
պիտի վազեն . պատերազմական
մարդոց պէս պարիսպներու վրայ
պիտի ելլեն .. և ամէն մէկերնին
իրենց ճամբուն մէջ պիտի քալեն ,
ու իրենց շաւիղները պիտի չփո-
8 խեն . Ու մէկզմէկ պիտի չհրեն .
և ամէն մէկը իր ճամբուն մէջ պի-
տի քալէ . ու թէ որ սուրի վրայ
ալ իյնան , պիտի չվիրաւորին ։
9 Քաղաքին մէջը պիտի պտըտին ,
ու պարսպին վրայ պիտի վազեն .
տուները պիտի ելլեն . գողի պէս
պատուհաններէն պիտի մտնեն ։
10 Անոնց երեսէն երկիրը պիտի դո-
ղայ . երկինքը պիտի սարսի . ա-
րեւը ու լուսինը պիտի խաւարի ,
ու աստղերը իրենց պայծառու-
11 թիւնը ետ պիտի քաշեն ։ Եւ Տէրը
իր զօրացը առջեւը իր ձայնը պիտի
տայ . քանզի անոր բանակը խիստ
մեծ է . քանզի անոր խօսքը 'ի գործ
դնողը զօրաւոր է . քանզի Տէրոջը
օրը մեծ ու խիստ ահեղ է , ու
ո՞վ կրնայ անոր դիմանալ ։
12 Սակայն հիմա ալ Տէրը այսպէս
կ'ըսէ . Ինծի դարձէք ձեր բոլոր
սրտովը , ծոմապահութեամբ , լա-
13 լով ու սգալով , Ու ձեր սիրտերը
պատռեցէ՛ք , և ոչ՛ թէ ձեր հան-
դերձները , և ձեր Տէր Աստուծոյն
դարձէք . քանզի անիկայ ողոր-
մած ու գթած , երկայնամիտ ու
բազումողորմ է , ու չարիքի հա-
14 մար կը զղջայ ։ Ո՞վ գիտէ ., գու-
ցէ անիկայ դառնայ ու զղջայ , ու
իր ետեւէն օրհնութիւն թողու , որ
կերակուր ըլլայ ձեր Տէր Աստուծոյն
հացի ընծայ ու թափելու նուէր
մատուցանելու ։
15 Սիոնի մէջ փող հնչեցուցէք ,
ծոմապահութեան օր որոշեցէք .
հանդիսաւոր ժողով քարոզեցէք .
16 Ժողովուրդը ժողվեցէ՛ք , Ժողովքը
սրբեցէք , ծերերը հաւաքեցէ՛ք .
տղաքները ու կաթնկեր մանուկ-
ները ժողվեցէ՛ք . փեսան իր սենեա-
կէն թող ելլէ , ու հարսը իր առա-
17 գաստէն ։ Տէրոջը պաշտօնը կա-
տարող քահանաները՝ սրահին ու
սեղանին մէջտեղը թող լան , ու
ըսեն . Ո՛վ Տէր՝ քու ժողովուր-
դիդ խնայէ , և քու ժառանգու-
թիւնդ նախատինքի մի՛ տար , որ
ազգերը անոնց վրայ տիրեն . ինչու
համար ժողովուրդներուն մէջը
ըսեն թէ ո՞ւր է անոնց Աստուածը ։
18 Ան ատենը Տէրը իր երկրին
համար պիտի նախանձի , ու իր
19 ժողովուրդին պիտի ողորմի ։ Եւ
Տէրը պատասխան պիտի տայ , ու
իր ժողովուրդին ըսէ . Ահա՛ ես
ձեզի ցորեն , գինի ու եղ պիտի
խրկեմ , ու անոնցմով պիտի կըշ-
տանաք . և ձեզ մէյմըն ալ ազգաց
20 մէջ նախատինք պիտի չընեմ ։ Ու
հիւսիսային զօրքը ձեր վրայէն
պիտի հեռացընեմ , ու անոր երեսը
դէպ 'ի արեւելեան ծովը , ու ետքը
դէպ 'ի արեւմտեան ծովը ըլլա-
լով , վանիկայ չոր ու ամայի եր-
կիր մը պիտի քշեմ . ու անոր գէշ
հոտը պիտի ելլէ . և անոր գարշա-
հոտութիւնը պիտի բարձրանայ .
21 քանզի մեծ բաներ ըրաւ ։ Մի
վախնար՝ ո՛վ երկիր , ցնծա՛ և ու-
րախացի՛ր . քանզի Տէրը մեծ բաներ
22 պիտի ընէ ։ Ո՛վ դաշտի անասուն-
ներ՝ մի՛ վախնաք . քանզի Անա-
պատին արօտները կը կանանչին .
քանզի ծառը իր պտուղը կու տայ .
թզենին ու որթը իրենց զօրու-
23 թիւնը կու տան ։ Եւ դուք՝ ո՛վ
Սիոնի որդիք , ձեր Տէր Աստու-
ծով ցնծացէ՛ք և ուրախ եղէ՛ք .
քանզի անիկայ չափաւորապէս
առջի անձրեւը ձեզի կու տայ . ձե-
զի անձրեւ կ'իջեցընէ՝ առջի անձ-
րեւը , ու վերջի անձրեւը առջի ամ-
24 սուն մէջ ։ Եւ կալերը ցորենով

Ն. Ք. ԶՔ. իրր 800

ժ Գլ. ա. 49 ։ ի Հմր 11 ։ ւ Ղև. իդ. 5 ։ Սաղ. իբ. 26 ։ Տես Ղև. իգ. 26 ։ Միք. գ. 14 ։ ի Գլ. կ. 17 ։ ծ Ղև. իզ. 11, 12 ։ Եզեկ. լէ. 26, 27, 28 ։ կ Ես. խե. 5, 21, 22 ։ Եզեկ. լթ. 22, 28 ։ հ Ես. խդ. 3 ։ Եզեկ. լթ. 29 ։ Գործ. բ. 17 ։ ձ Զաք. ժբ. 10 ։ Յովհ. է. 39 ։ ղ Ես. ծզ. 13 ։ ճ Գործ. իա. 9 ։ մ Ա Կոր. ժբ. 13 ։ Գաղ. գ. 28 ։ Կող. գ. 11 ։ յ Մատ. իդ. 29 ։ Մար. ժգ. 24 ։ Ղուկ. իա. 11, 25 ։ ն Հմր 10 ։ Ես. ժգ. 9, 10 ։ Գլ. գ. 15 ։ Մատ. իդ. 29 ։ Մար. ժգ. 24 ։ Ղուկ. իա. 25 ։ Յայտ. զ. 12 ։ շ Մաղ. դ. 5 ։ ո Հռով. ժ. 13 ։ չ Ես. խզ. 13 ։ ծթ. 20 ։ Աբդ. 17 ։ Հռով. ժա. 26 ։ պ Ես. ժա. 11, 16 ։ Երեմ. լա. 7 ։ Միք. դ. 7 ։ ե. 3, 7, 8 ։ Հռով. թ. 27 ։ ժա. 5, 7 ։

ա Երեմ. լ. 3 ։ Եզեկ. լը. 14 ։ բ Զաք. ժդ. 2, 3, 4 ։ գ Հմր 12 ։ * [illegible] Տէրոջը դատաստանին ։ դ Ես. կզ. 16 ։ Եզեկ. լը. 22 ։ ե Աբդ. 11 ։ Նաւ. գ. 10 ։ զ Ամով. ա. 6, 9 ։

պիտի լեցուին . ու հնձանները գի-
25 նիով ու եղով պիտի յորդին ։ Ու
ձեզի ետ պիտի տամ ան տարինե-
րուն պտուղները, որ մարախը,
ջորեակը, թրթուրը ու խառնիճը,
ձեր մէջը խրկած իմ մեծ զօրքս
26 կերաւ . Եւ առատօրէն պիտի ու-
տէք, ու կշտանաք, ու ձեր Տէր
Աստուծոյն անունը պիտի օրհնէք,
որ ձեզի համար հրաշքներ ըրաւ .
և իմ ժողովուրդս յաւիտեան պիտի
27 չամչնայ ։ Ու պիտի գիտնաք՝ թէ
ես Իսրայէլին մէջն եմ, և թէ ձեր
Տէր Աստուածը ես եմ, ու ուրիշ
մը չկայ . և իմ ժողովուրդս յաւի-
տեան պիտի չամչնայ ։
28 Ու պիտի ըլլայ որ անկէ ետև՝
իմ Հոգիս ամէն մարմնոյ վրայ
պիտի թափեմ, ու ձեր տղաքը,
և ձեր աղջիկները պիտի մարգա-
րէանան . ձեր ծերերը երազներ
պիտի տեսնեն, ու ձեր երիտա-
սարդները տեսիլքներ պիտի տես-
29 նեն ։ Եւ ծառաներուն վրայ, ու
աղախիններուն վրայ ալ՝ ան օրերը
30 իմ Հոգիս պիտի թափեմ . Ու
երկինքի մէջ, ու երկրի վրայ
նշաններ պիտի ընեմ, արիւն, ու
31 կրակ, և ծուխի սիւներ ։ Արեւը՝
խաւարի պիտի դառնայ, ու լու-
սինը արիւնի, Տէրոջը մեծ
32 ու ահեղ օրը չեկած ։ Եւ պիտի
ըլլայ որ՝ ամէն ով որ Տէրոջը ա-
նունը կանչէ, պիտի ազատի .
քանզի Տէրոջը ըսածին պէս՝ Սիօն
լեռանը վրայ, ու Երուսաղէմի մէջ
փրկութիւն պիտի ըլլայ . ու
ան մնացորդներուն մէջը՝ որոնք
Տէրը պիտի կանչէ ։

## ԳԼ. Գ

1 Աստուծոյ դատաստանները իր ժողովուրդին թշնամեաց դէմ ։ 9 Աստուած իր դատաստաններովը պիտի ճանչցուի ։ 18 Աստուծոյ օրհնութիւնները իր եկեղեցիին վրայ ։

1 Քանզի ահա՝ ան օրերը, ու ան
ժամանակը, որ ես Յուդայի
ու Երուսաղէմի գերութիւնը ետ
2 պիտի դարձընեմ, Ան ատենը բո-
լոր ազգերը պիտի ժողվեմ, ու զա-
նոնք * Յովսափատու հովիտը պի-
տի իջեցընեմ, և հոն անոնց հետ
դատ պիտի վարեմ, իմ ժողովուր-
դիս, ու իմ ժառանգութեանս
Իսրայէլին համար, որն որ ազգերու
մէջ ցրուեցին, ու իմ երկիրս բաժ-
3 նեցին . Եւ իմ ժողովուրդիս
համար վիճակ ձգեցին, ու տղան՝
պոռնիկի վարձքի տեղ տուին, և
աղջիկը՝ գինիի համար ծախեցին,
4 որ խմեն ։ Ու նաև դուք ինծի
հետ ի՞նչ բան ունիք, ով Տիւ-
րոս, ու Սիդոն, և Փղշտացւոց
բոլոր սահմանները . միթէ դուք
ինծի հատուցում պիտի ընէք .
թէ որ դուք ինծի հատուցում ը-
նէք, շուտով անյապաղ ձեր
հատուցումը ձեր գլուխը պիտի
5 դարձընեմ ։ Քանզի իմ արծաթս
ու ոսկիս առիք, ու իմ աղէկ
ու ցանկալի բաներս ձեր մե-
6 հեանները տարիք . Եւ Յուդայի
որդիքը, ու Երուսաղէմի որդիքը՝
Յունաց որդւոցը ծախեցիք, որ-
պէս զի զանոնք իրենց սահմանէն
7 հեռացընէք ։ Ահա ես զանոնք
պիտի արթընցընեմ ան տեղէն՝ ուր
որ դուք զանոնք ծախեցիք, և
ձեր հատուցումը ձեր գլխուն վրայ
8 պիտի դարձընեմ . Ու ձեր տղաք-
ները, ու աղջիկները Յուդայի
որդւոց ձեռքը պիտի ծախեմ . և
անոնք հեռաբնակ ազգի՝ Սաբա-
յեցւոց պիտի ծախեն զանոնք .
քանզի Տէրը խօսեցաւ ։
9 Ասիկայ ազգերու մէջ հրատա-
րակեցէք . պատերազմ քարոզե-
ցէք . զօրաւորները արթընցու-
ցէք . բոլոր պատերազմական մար-
10 դիկները մօտենան ու ելլեն ։ Ձեր
խոփերը՝ սուրեր † շինեցէք, ու ձեր
յօտոցները՝ նիզակներ . տկար
եղողը՝ Ես զօրաւոր եմ՝ թող ը-
11 սէ ։ Շուտով եկէք՝ ով բոլոր
շրջակայ ազգեր, ու ժողվուեցէք .
քու զօրաւորներդ՝ ով Տէր՝ հոն
12 իջեցուր ։ Ազգերը թող արթըն-
նան, ու Յովսափատու հովիտը
ելլեն . քանզի բոլոր շրջակայ ազ-
գերը դատելու համար հոն պիտի
նստիմ ։
13 Մանգաղը երկընցուցէք, քան-
զի հունձքը հասած է . եկէք,
իջէք . քանզի հնձանը լեցուե-
ցաւ, աւազանները կը յորդին .
քանզի անոնց չարութիւնը մեծ է ։
14 Բազմութիւններ՝ բազմութիւններ
կը ժողվուին Վճռոյ հովիտին մէջ .
քանզի Տէրոջը օրը մօտ է Վճռոյ
15 հովիտին մէջ ։ Արեւը ու լուսինը
պիտի խաւարին, և աստղերը իրենց
պայծառութիւնը ետ պիտի քա-
16 շեն ։ Տէրը Սիօնէն պիտի գոչէ,
ու Երուսաղէմէն իր ձայնը պիտի
տայ, և երկինքը ու երկիրը պիտի
սարսին . Բայց Տէրը իր ժողո-
վուրդին ապաւէն՝ ու Իսրայէլի որ-
դւոյը ամրութիւն պիտի ըլլայ ։
17 Եւ պիտի գիտնաք թէ ես եմ ձեր
Տէր Աստուածը, որ իմ սուրբ լե-
ռանս Սիօնին մէջ կը բնակիմ . ու
Երուսաղէմը սուրբ պիտի ըլլայ . և
անկէ մէյմըն ալ օտարներ պիտի
չանցնին ։
18 Եւ պիտի ըլլայ որ՝ ան օրը լեռ-
ները քաղցրու պիտի կաթեցընեն,

Ն. Ք. ԶՔ. իրր 800

է Եզեկ. իե. 15, 16, 17 ։ ը Դան. ժա. 38 ։ թ Ես. խգ. 5, 6 ։ իթ. 12 ։ Երեմ. իգ. 8 ։ ժ Երեմ. գ. 20 ։ ի Տես Եզ. բ. 9, 10 ։ Երեմ. խզ. 3, 4 ։ Եզեկ. լը. 7 ։ լ Տես Ես. բ. 4 ։ Միք. դ. 3 ։ † Եբր. ծեծեցէք ։ խ Զաք. ժբ. 8 ։ ծ Հմր 2 ։ կ Սաղ. ճգ. 20 ։ Ես. ժգ. 3 ։ հ Հմր 2 ։ ձ Սաղ. ղզ. 13 ։ ղը. 9 ։ ճժ. 6 ։ Ես. բ. 4 ։ գ. 13 ։ Միք. դ. 3 ։ ղ Մատ. ժգ. 39 ։ Յայտ. ժդ. 15, 18 ։ ճ Երեմ. ծա. 33 ։ Ովս. զ. 11 ։ մ Ես. կգ. 3 ։ Ողբ. ա. 15 ։ Յայտ. ժդ. 19, 20 ։ յ Հմր 2 ։ ն Գլ. բ. 1 ։ շ Գլ. բ. 10, 31 ։ ո Երեմ. իե. 30 ։ Գլ. բ. 11 ։ Ամով. ա. 2 ։ չ Անգ. բ. 6 ։ պ Ես. ծա. 5, 6 ։ ջ Գլ. բ. 27 ։ ռ Դան. ժա. 45 ։ Աբդ. 16 ։ Զաք. ը. 3 ։ ս Ես. լե. 8 ։ ծբ. 1 ։ Նաւ. ա. 15 ։ Զաք. ժդ. 21 ։ Յայտ. իա. 27 ։ վ Ամով. թ. 13 ։

ու բլուրները կաթ պիտի վազցը-
նեն, և Յուդային ˢբոլոր ձորերը
ջուրեր պիտի քալեցընեն. ու ʳՏէ-
րոջը տունէն աղբիւր պիտի ելլէ,
և ˢՍատիմի ձորը պիտի ոռոգէ ։
19 Յուդայի որդւոցը եղած անիրաւու-
թեանը համար, ˢԵգիպտոսը ամա-
յութիւն պիտի ըլլայ, ու ˢԵդովմը
ամայի անապատ պիտի ըլլայ. քան-
զի անոնց երկրին մէջ անմեղ ա-
20 րիւն թափեցին ։ Բայց Յուդան
մարդաբնակ պիտի ըլլայ ˣյաւի-
տեան, և Երուսաղէմը դարէ 'ի
21 դար ։ Եւ ˣ*պիտի մաքրեմ անոնց
արիւնը որ մաքրած չէի". ˢև Տէրը
Սիօնի մէջ պիտի բնակի ։

Ն. Ք. գԺ. իբր 800

ˢԵս. Ժ. 25 ։ ʳՍաղ. խզ. 4 ։ Եզեկ. ծէ. 1 ։ Զաք. ժդ. 8 ։ Յայտ. իբ. 1 ։
ˢԹուո. իե. 1 ։
ˢԵս. ժԹ. 1, &c ։
ˢԵրեմ. խԹ. 17 ։ Եզեկ. իե. 12, 13 ։ Ամով. ա. 11 ։ Աբդ. 10 ։

Ն. Ք. գԺ. իբր 800

ˣԱմով. Թ. 15 ։
ˣԵս. գ. 4 ։
*Կամ՝ անոնց արիւնը վըրէժխնդիր պիտի ըլլամ, ու անպարտ պիտի չԹողում.
ˢԵզեկ. խը. 35 ։ Հմր 17 ։ Յայտ. իա. 3 ։

# ՄԱՐԳԱՐԷՈՒԹԻՒՆ ԱՄՈՎՍԱՅ

## ԳԼՈՒԽ Ա

1 Ամովս կը նախանձայնէ Աստուծոյ դատաստանները Ասորւոց վրայ ։ 6 Փղշտացւոց ։ 9 Տիւրոսի ։ 11 Եդովմայեցւոց ։ 13 ու Ամմոնացւոց վրայ ։

1 ˢԹեկուէի ˢհովիւներուն մէջէն
եղող Ամովսին խօսքերն են,
որ Յուդայի Թագաւորին ˢՈզիային
օրերը, ու Իսրայէլի Թագաւորին
Յովասի որդւոյն ˢՅերոբովամին
օրերը ˢգետնաշարժէն երկու տարի
առաջ տեսիլքով անոր յայտնուե-
2 ցաւ Իսրայէլի վրայով ։ Ու ըսաւ.
Տէրը ˢՍիօնէն պիտի գոչէ, ու Ե-
րուսաղէմէն իր ձայնը պիտի տայ.
և հովիւներուն արօտները սուգ պի-
տի բռնեն, ու ˢԿարմեղոսին գլու-
խը պիտի չորնայ ։
3 Տէրը այսպէս կ'ըսէ. ˢԴամաս-
կոսի իրեք յանցանքին համար, ու
չորսին համար՝ ˢանոր պատիժը ետ
պիտի չդարձընեմ. ˢքանզի անոնք
Գաղաադը երկաթէ կամնասայլե-
4 րով ծեծեցին. ˢՍակայն Ազայէլին
տանը վրայ կրակ պիտի խրկեմ, ու
Բենադադին պալատները պիտի ու-
5 տէ ։ Եւ Դամասկոսին ˢնիգերը
պիտի կոտրտեմ, ու Աւէնի դաշ-
տէն՝ բնակիչը, ու Եդեմի տունէն՝
գաւազան բռնողը պիտի կոտրեմ.
և ˢԱսորւոց ժողովուրդը ˢԿիր գերի
պիտի քշուի, կ'ըսէ Տէրը ։
6 Տէրը այսպէս կ'ըսէ. ˢԳազայի
իրեք յանցանքին համար, ու չոր-
սին համար՝ անոր պատիժը ետ պիտի
չդարձընեմ. քանզի անոնք գերի-
ները բոլորովին գերի քշեցին, ˢոր
7 Եդովմին ձեռքը մատնեն. ˢՍակայն
Գազային պարսպին վրայ կրակ պի-
տի խրկեմ, ու անոր պալատները
8 պիտի ուտէ ։ Եւ ˢԱզովտոսէն՝
բնակիչը, ու Ասկաղոնէն գաւազան
բռնողը պիտի կոտրեմ, և ˢիմ
ձեռքս Ակկարոնի վրայ պիտի դար-
ձընեմ. ու ˢՓղշտացւոց մնացորդը
պիտի կորսուի, կ'ըսէ Տէր Եհովան ։
9 Տէրը այսպէս կ'ըսէ. ˢՏիւրոսի
իրեք յանցանքին համար, ու չորսին
համար՝ անոր պատիժը ետ պիտի
չդարձընեմ. ˢքանզի գերիները բո-
լորովին Եդովմին ձեռքը մատնե-
ցին, ու ˢեղբայրական ուխտը չը-
10 յիշեցին. ˢՍակայն Տիւրոսին պա-
րըսպին վրայ կրակ պիտի խրկեմ,
ու անոր պալատները պիտի ուտէ ։
11 Տէրը այսպէս կ'ըսէ. ˢԵդովմի
իրեք յանցանքին համար, ու չոր-
սին համար՝ անոր պատիժը ետ պիտի
չդարձընեմ. քանզի ˢիր եղբայրը
Սրով հալածեց, ու իր ողորմու-
թիւնը կտրեց. ˢև իր բարկութիւ-
նը միշտ պատառեց. ու իր կատա-
12 ղութիւնը յաւիտեան պահեց. Սա-
կայն ˢԹեմանի վրայ կրակ պիտի
խրկեմ, ու Բօսրային պալատները
պիտի ուտէ ։
13 Տէրը այսպէս կ'ըսէ. ˢԱմմոնի
որդւոցը իրեք յանցանքին համար,
ու չորսին համար՝ անոնց պատիժը
ետ պիտի չդարձընեմ. քանզի Գա-
ղաադի ˢյղի կնիկները ճեղքեցին,
ˢորպէս զի իրենց սահմանները լայն-
14 ցընեն. Սակայն ˢՌաբբայի պա-
րըսպին վրայ կրակ պիտի բռնկցը-
նեմ, ու անոր պալատները պիտի
ուտէ. ˢպատերազմի օրը՝
ˢաղաղակով, ˢփոթորիկի օրը՝
15 խռովութեամբ պիտի ըլլայ ։ Եւ
ˢանոնց Թագաւորը" գերութեան
պիտի երթայ, ինքը՝ ու իր իշխան-
ները մէկտեղ, կ'ըսէ Տէրը ։

## ԳԼ. Բ

1 Աստուծոյ բարկութիւնը Մովաբի դէմ ։ 4 Յուդայի ։ 6 ու Իսրայէլի դէմ ։ 9 Աստուած կը գանգատի անոնց ապերախտութեանը համար ։

1 Տէրը այսպէս կ'ըսէ. ˢՄովաբի
իրեք յանցանքին համար, ու
չորսին համար՝ անոր պատիժը ետ

Ն. Ք. գԺ. 787

ˢԲ Թագ. ժդ. 2 ։ ˢԲ Մն. ի. 20 ։
ˢԲ Գլ. է. 14 ։
ˢՈվս. ա. 1 ։
ˢԳլ. է. 10 ։
ˢԶաք. ժդ. 5 ։
ˢԵրեմ. իե. 30 ։ Յովել. գ. 16 ։
ˢԳ Թագ. իե. 2 ։ Ես. լգ. 9 ։
ˢԵս. ը. 4 ։ ժէ. 1 ։ Երեմ. խԹ. 23 ։ Զաք. Թ. 1 ։
ˢՀմր 6, &c ։
ˢԴ Թագ. ժ. 33 ։ ժգ. 7 ։
ˢԵրեմ. ժէ. 27 ։ խԹ. 27 ։ Հմր 7, 10, 12 ։ Գլ. բ. 2, 5 ։
ˢԵրեմ. ծա. 30 ։ Ողբ. բ. 9 ։
ˢԴ Թագ. ժզ. 9 ։
ˢԳլ. Թ. 7 ։
ˢԲ Մն. իը. 18 ։ Ես. ժդ. 29 ։ Երեմ. խէ. 4, 5 ։ Եզեկ. իե. 15 ։ Սոփ. բ. 4 ։
ˢՀմր 9 ։
ˢԵրեմ. խէ. 1 ։
ˢՍոփ. բ. 4 ։ Զաք. Թ. 5, 6 ։
ˢՍաղ. ձա. 14 ։
ˢԵրեմ. խէ. 4 ։ Եզեկ. իե. 16 ։

Ն. Ք. գԺ. 787

ˢԵս. իգ. 1 ։ Երեմ. խէ. 4 ։ Եզեկ. իզ. իէ. իը ։ Յովել. գ. 4, 5 ։
ˢՀմր 6 ։
ˢԳ Թագ. ե. 11 ։ Թ. 11-14 ։
ˢՀմր 4, 7 ։
ˢԵս. իա. 11 ։ լգ. 5 ։ Երեմ. խԹ. 8, &c ։ Եզեկ. իե. 12, 13, 14 ։ լե. 2, &c ։ Յովել. գ. 19 ։ Աբդ. 1, &c ։ Մաղ. ա. 4 ։
ˢԾն. իէ. 41 ։ Օր. իգ. 7 ։ Մաղ. ա. 2 ։
ˢԲ Մն. իը. 17 ։
ˢԵզեկ. լե. 5 ։
ˢԱբդ. 9, 10 ։
ˢԵրեմ. խԹ. 1, 2 ։ Եզեկ. իե. 2 ։ Սոփ. բ. 9 ։
ˢՈվս. ժգ. 16 ։
ˢԵրեմ. խԹ. 1 ։
ˢԲ Օր. գ. 11 ։ Բ Թագ. ժբ. 26 ։ Երեմ. խԹ. 2 ։ Եզեկ. իե. 5 ։
ˢԳլ. բ. 2 ։
ˢԿամ՝ Մելքոմը. Երեմ. խԹ. 3 ։

ˢԵս. ժե. ժզ ։ Երեմ. խը ։ Եզեկ. իե. 8, &c ։ Սոփ. բ. 8 ։

պիտի չդարձնեմ. քանզի Եդովմի
թագաւորին ոսկորները մինչեւ կիր
2 դառնալը այրեց. Սակայն Մովա-
բին վրայ կրակ պիտի խրկեմ, ու
բԿարիօթին պալատները պիտի ու-
տէ. ու Մովաբը խռովութեամբ,
գաղաղակով, ու փողի ձայնով
3 պիտի մեռնի. Եւ անոր մէջէն
դդատաւորը բնաջինջ պիտի ընեմ,
ու անոր հետ անոր բոլոր իշխաննե-
րը պիտի մեռցնեմ, կ՚ըսէ Տէրը։
4 Տէրը այսպէս կ՚ըսէ. Յուդայի
իրեք յանցանքին համար, ու չոր-
սին համար՝ անոր պատիժը ետ պի-
տի չդարձնեմ. էքանզի Տէրոջը
օրէնքը անարգեցին, ու անոր պա-
տուիրանքները չպահեցին. հապա
զիրենց ստութիւնները՝ զիրենք մո-
լորցուցին, էորոնց հետեւող եղեր
5 էին իրենց հայրերը. ըՍակայն Յու-
դայի վրայ կրակ պիտի խրկեմ, ու
Երուսաղէմին պալատները պիտի
ուտէ։
6 Տէրը այսպէս կ՚ըսէ. Իսրայէլի
իրեք յանցանքին համար, ու չոր-
սին համար՝ անոր պատիժը ետ պի-
տի չդարձնեմ. քանզի թանոնք
արդարը՝ ստակով, ու տնանկը՝
7 զոյգ մը կօշիկով ծախեցին. Ա-
նոնք *աղքատներուն գլխուն վրայ
եղող երկրի հողին կը ցանկան", ու
ժչքաւորներուն ճամբան կը ծռեն.
եւ իիմ սուրբ անունս պղծելու հա-
մար ւորդին ու հայրը՝ նոյն
8 աղջկան կը մտնեն. Ու խամէն սե-
ղանի քով՝ ծգրաւ առնուած հան-
դերձներու վրայ կը պառկին, եւ ի-
րենց աստուածներուն տանը մէջ
զրկուածներուն գինին կը խմեն։
9 Բայց ես անոնց առջեւէն կԱմորհա-
ցին բնաջինջ ըրի, հորուն բարձ-
րութիւնը եղեւիններու բարձրու-
թեանը պէս էր. եւ անիկայ կաղնի-
ներու պէս ամուր էր. ու ձվերէն
անոր պտուղը, եւ վարէն անոր
10 արմատները բնաջինջ ըրի։ Ու
ղես ձեզ Եգիպտոսի երկրէն հանե-
ցի, եւ ճձեզ քառասուն տարի անա-
պատին մէջը պտըտցուցի, որ Ա-
մորհացիին երկիրը ժառանգէք։
11 Ու ձեր տղաքներէն՝ մարգարէներ,
եւ ձեր երիտասարդներէն՝ մնուիրա-
ւորներ հանեցի. հիմա ասանկ չէ՞,
ով Իսրայէլի որդիքը՝ կ՚ըսէ Տէրը։
12 Բայց դուք՝ նուիրաւորներուն գի-
նի խմցուցիք. ու մարգարէներուն
պատուիրեցիք՝ յըսելով. Մարգա-
13 րէութիւն մի՛ ընէք։ Ահա ես †ձեր
եղած տեղը յեղ պիտի կոխեմ,
ինչպէս որ որաներով լեցուն սայլը
14 իր տնօյն տեղը կը կոխէ"։ նԵւ
արագընթացը պիտի չկրնայ փախ-
չիլ, ու ուժովը պիտի չկըր-
նայ իր ուժը գործածել, եւ զօրա-
ւորը պիտի չկրնայ իր անձը ազա-
15 տել. Ու աղեղ բռնողը պիտի չը-
կրնայ կայնիլ, եւ շուտ վազողը
պիտի չկրնայ ոտքով ազատել, ոու
ձի հեծնողը պիտի չկրնայ իր անձը
16 ազատել. Եւ զօրաւորներուն մէջ
քաջասիրտ եղողը՝ այն օրը մերկ
պիտի փախչի՝ կ՚ըսէ Տէրը։

## ԳԼ. Գ

1 Աստուծոյ դատաստանին հարկաւորութիւնը, 9 ու անոր հրատարակուիլը։

1 Լսեցէք աս խօսքը՝ ով Իսրայէլի
որդիք, որ Տէրը ձեր վրայ կը
խօսի, այն բոլոր ազգատոհմին վրայ՝
որ Եգիպտոսի երկրէն հանեցի,
2 ըսելով. պԵրկրիս բոլոր ազգա-
տոհմներէն միայն ձեզ ճանչցայ.
բաս պատճառով ձեր բոլոր անօրէ-
նութիւններուն համար ձեզ պիտի
3 պատժեմ։ Կարելի՞ է որ երկու
մարդ մէկտեղ քալեն, թէ որ միա-
4 բանութիւն չունենան։ Միթէ
առիւծը անտառին մէջ կը մռընչէ՞,
թէ որ որս մը չունենայ. առոյգ
առիւծը իր որջէն իր ձայնը կու
տա՞յ, թէ որ բան մը առած չըլլայ։
5 Միթէ թռչունը երկրի վրայ վարմի
մէջ կ՚իյնա՞յ, թէ որ անոր համար
որոգայթ լարուած չըլլայ. ու վար-
մը երկրէն կը վերցուի՞, երբոր
6 բան մը բռնած չէ։ Թէ որ քա-
ղաքին մէջ փող հնչուի, ժողովուր-
դը չը՞վախնար. գՄիթէ քաղաքին
մէջ չարիք մը կ՚ըլլա՞յ, թէ որ
7 Տէրը զանիկայ ըրած չէ։ Ցիրաւի
Տէր Եհովան բան մը չըներ, մինչեւ
որ դիր գաղտնիքը իր ծառաներուն՝
8 մարգարէներուն չյայտնէ։ եԱ-
ռիւծը մռնչեց, ո՞վ պիտի չվախ-
նայ. Տէր Եհովան խօսեցաւ, զո՞վ
պիտի չմարգարէանայ։
9 Ազոտոսի մէջ՝ պալատներու
վրայ, ու Եգիպտոսի երկրին մէջ՝
պալատներու վրայ կանչեցէք, ու
ըսէք. Սամարիայի լեռներուն վրայ
ժողվուեցէք, եւ անոր մէջը շատ
խռովութիւններ, ու անոր մէջը
10 բռնութիւններ տեսէք։ Քանզի
էուղղութիւն ընել չեն գիտեր,
կ՚ըսէ Տէրը. իրենց պալատներուն
մէջը զրկանք ու յափշտակութիւն
11 կը դիզեն։ Անոր համար Տէր
Եհովան այսպէս կ՚ըսէ. ըԹշնամին
երկրին բոլորտիքը պիտի ըլլայ, ու
քեզմէ քու ուժդ պիտի իջեցնէ.
եւ քու պալատներդ պիտի կողոպ-
տուին։
12 Տէրը այսպէս կ՚ըսէ. Ինչպէս
որ հովիւը առիւծին բերնէն երկու
ազդր, կամ մէկ ականջի կտոր կ՚ա-
զատէ, այնպէս ալ պիտի ազատին

Ն. Ք. ԴՃ. 787

բ Երեմ. խը. 24, 41։
գ Գլ. ա. 14։
դ Թուոց. իդ. 17։ Երեմ. խը. 7։
ե Ղև. իգ. 14, 15։ Նեեմ. ա. 7։ Դան. թ. 11։
զ Ես. իը. 15։ Երեմ. ժզ. 19, 20։ Հռովմ. ա. 25։
է Եզեկ. ի. 13, 16, 18, 24, 30։
ը Երեմ. ժէ. 27։ Ովս. ը. 14։
թ Ես. իթ. 21։ Գլ. ը. 6։
* Կամ՝ աղքատներուն գլուխը երկրի հողին վրայ տեսնել կը փափաքին,
ժ Ես. ժ. 2։ Գլ. ե. 12։
ի Ղև. ի. 3։ Եզեկ. լզ. 20։ Հռովմ. բ. 24։
լ Եզեկ. իբ. 11։
խ Եզեկ. իգ. 41։ Ա Կոր. ը. 10, ժ. 21։
ծ Ել. իբ. 26։
կ Թուոց. ժգ. 24։ բ Օր. բ. 31։ Յեսու. ժդ. 8։
հ Թուոց. ժգ. 29, 33, 34։
ձ Ես. ե. 24։ Մաղ. դ. 1։
ղ Ել. ժբ. 51։ Միք. զ. 4։
ճ բ Օր. բ. 7։ ը. 2։
մ Թուոց. զ. 2։ Դատ. ժգ. 5։
յ Ես. լ. 10։ Երեմ. ժա. 21։ Գլ. է. 12, 13։ Միք. բ. 6։
† Կամ՝ ձեր տակը ճնշուած եմ. ինչպէս որ որաներով լեցուն սայլը կը ճնշուի։
ն Գլ. թ. 1։ Երեմ. թ. 23։

Ն. Ք. ԴՃ. 787

շ Սաղ. լգ. 16։
ո Սաղ. լգ. 17։

պ բ Օր. է. 6, ժ. 15։ Սաղ. ճխէ. 19, 20։
բ Տես Դան. թ. 12։ Մատ. ժա. 22։ Ղուկ. ժբ. 47։ Հռովմ. բ. 9։ Ա Պետ. դ. 17։
գ Ես. խե. 7։
դ Ծն. զ. 13, ժը. 17։ Սաղ. իե. 14։ Յովհ. ժե. 15։
ե Գլ. ա. 2։
զ Գործ. դ. 20, ե. 20, 29։ Ա Կոր. թ. 16։
է Երեմ. դ. 22։
ը Դ Թագ. ժէ. 3, 6, ժը. 9, 10, 11։

Իսրայէլի որդիքը, որոնք Սամա-
րիայի մէջ բազմոցի անկիւնը, ու
[*]Դամասկոսի մէջ" անկողինի վրայ
կը նստին։
13 Լսեցէ՛ք, ու Յակոբին տանը
վկայութիւն ըրէք, կ'ըսէ զօրաց
14 Աստուածը՝ Տէր Եհովան, Որ այն
օրը որ Իսրայէլին յանցանքներուն
պատիժը անոր վրայ բերեմ, Բե-
թէլին սեղաններն ալ պիտի պատ-
ժեմ. ու սեղանին եղջիւրները պի-
տի կոտրին, ու գետինը պիտի
15 իյնան։ Եւ [Բ]ձմեռնային տունը,
ու [Ճ]ամառնային տունը պիտի զար-
նեմ. և [Է]փղոսկրեայ տուները պիտի
կորսուին, ու մեծ տուները բնա-
ջինջ պիտի ըլլան, կ'ըսէ Տէրը։

ԳԼ. Դ

1 Աստուած կը յանդիմանէ Իսրայէլը հարստա-
հարութեան համար. 4 կռապաշտութեան հա-
մար, 6 և իրենց խրատ չընդունելուն համար։

1 Լսեցէ՛ք այս խօսքը, ո՛վ Սամա-
րիայի լեռանը վրայ եղող [–]Բա-
սանի կովե՛ր, որ աղքատներուն
զրկանք կ'ընէք, ու տնանկները
ոտքի տակ կ'առնէ՛ք, և ձեր տէրե-
րուն՝ Բեր որ խմենք՝ կ'ըսէ՛ք։
2 [Բ]Տէր Եհովան իր սրբութիւնովը
երդում ըրաւ, թէ ահա ձեր վրայ
օրեր կու գան, որ ձեզ [Գ]կարթերով
պիտի վերցընէ, ու ձեր մնացորդը
3 ձուկի կարթերով։ Եւ [Դ]փլած
տեղերէն պիտի ելլէք, ամէն մէկեր-
նիդ իր երեսին դարձած կողմէն, ու
բերդը պիտի նետուիք, կ'ըսէ Տէրը։
4 [Ե]Բեթէլ եկէք, ու յանցանք
գործեցէք. [Զ]Գաղգաղայի մէջ
յանցանք ընելը շատցուցէք. և
[Է]ամէն առտու ձեր զոհերը, [Ը]ամ-
էն իրեք օրը ձեր տասանորդները
5 բերէ՛ք։ [Թ]Ու շնորհակալութեան
զոհը խմորեա՛լ մատուցէք, ու
[Ժ]կամաւոր ընծաներ քարոզեցէք
— հրատարակեցէ՛ք. [Ի]քանզի այս-
պէս սիրեցիք՝ ո՛վ Իսրայէլի որդիք,
6 կ'ըսէ Տէր Եհովան։ Եւ ես ալ
ձեզի՝ ձեր ամէն քաղաքներուն մէջ՝
ակռայի մաքրութիւն, ու ձեր ամէն
տեղուանքը՝ հացի կարօտութիւն
տուի. [Լ]սակայն ինծի չդարձաք,
7 կ'ըսէ Տէրը։ Ու նաև հունձքէն
իրեք ամիս առաջ՝ անձրևը ձեզմէ
արգիլեցի. ու մէկ քաղաքին վը-
րայ անձրև իջեցուցի, և միւս քա-
ղաքին վրայ անձրև չիջեցուցի. մէկ
վիճակին վրայ անձրև եկաւ, ու մէ-
կալ վիճակը՝ որուն վրայ անձրև չե-
8 կաւ, չորցաւ։ Ու երկու իրեք
քաղաք՝ ջուր խմելու համար մէկ
քաղաքի մէջ ժողվուեցան, բայց
բաւական չգտան. [Խ]սակայն ինծի
9 չդարձաք, կ'ըսէ Տէրը։ [Ծ]Ձեզ

Ն. Ք. ՉՔ. 787
[*] Կամ՝ Դամասկոսի կերպասով զարդարուած
[Բ] Երեմ. ԼԶ. 22։
[Ճ] Դատ. Գ. 20։
[Է] Գ Թագ. ԻԲ. 39։
[–] Սաղ. ԻԲ. 12։ Եզեկ. ԼԹ. 18։
[Բ] Սաղ. ԾԹ. 35։
[Գ] Երեմ. ԺԶ. 16։ Ամբ. Ա. 15։
[Դ] Եզեկ. ԺԲ. 5, 12։
[Ե] Եզեկ. Ի. 39։
[Զ] Ովս. Դ. 15։ ԺԲ. 12։ Գլ. Ե. 5։
[Է] Թուոց ԻԸ. 3, 4։
[Ը] Բ Օր. ԺԴ. 28։
[Թ] Ղեւ. Է. 13։ ԻԳ. 17։
[Ժ] Ղեւ. ԻԲ. 18, 21։ Բ Օր. ԺԲ. 6։
[Ի] Սաղ. ՁԱ. 12։
[Լ] Եսա. ԻԹ. 11։ Երեմ. Ե. 3։ Անգ. Բ. 17։ Հմր 8, 9։
[Խ] Հմր 6, 10, 11։
[Ծ] Բ Օր. ԻԲ. 22։ Անգ. Բ. 17։

խորշակահարութեամբ, ու դալու-
կով զարկի. [Կ]խառնիճը կերաւ ձեր
բազմաթիւ պարտէզները, ու այ-
գիները, և թզենիները, ու ձիթե-
նիները. սակայն ինծի չդարձաք,
10 կ'ըսէ Տէրը։ [Հ]Եգիպտոսի [†]ճամբուն
մէջ" ձեր վրայ ժանտախտ խրկեցի.
ձեր երիտասարդները սրով մեռցու-
ցի, ու ձեր ձիերը գերի ըրի, և
ձեր բանակներուն գարշահոտու-
թիւնը մինչև ձեր քիթը հանեցի.
[Ձ]սակայն ինծի չդարձաք, կ'ըսէ
11 Տէրը։ Աստուծոյ կործանած
[Ղ]Սոդոմին ու Գոմորին պէս՝ ձեզ
ալ կործանեցի. [Ճ]ու կրակէ հա-
նուած խանձողի պէս եղաք. [Մ]սա-
կայն ինծի չդարձաք, կ'ըսէ Տէրը։
12 Անոր համար քեզի այսպէս պիտի
ընեմ, ո՛վ Իսրայէլ. և որովհետև
քեզի աս բանը պիտի ընեմ, [Յ]քու
Աստուծդ դիմաւորելու պատ-
13 րաստուէ, ո՛վ Իսրայէլ։ Քանզի
ահա՛ ան որ լեռները հաստատեց,
ու հովը ստեղծեց, [Ն]և կը յայտնէ
մարդուն՝ թէ ինչ է անոր խոր-
հուրդը, [Շ]արշալոյսը խաւար կ'ը-
նէ, [Ո]ու երկրիս բարձր տեղերուն
վրայ կը քալէ, [Չ]անոր անունը՝
Եհովայ՝ զօրաց Աստուած է։

ԳԼ. Ե

1 Իսրայէլի վրայով ողբ մը։ 4 Ապաշխարելու
յորդորանք մը։ 21 Աստուած կը մերժէ ա-
նոնց կեղծաւորութեամբ ըրած ծառայութիւ-
նը։

1 Լսեցէք այս խօսքը՝ [–]ձեր վրայ ը-
րած ողբս, ո՛վ Իսրայէլի տու-
2 նը։ Իսրայէլի կոյսը ինկած է.
մէյմըն ալ պիտի չելլէ. իր երկրին
վրայ ձգուած է. զանիկայ վերցը-
3 նող չկայ։ Քանզի Տէր Եհովան
այսպէս կ'ըսէ. Ան քաղաքին մէ-
ջը՝ ուսկից որ հազար կ'ելլէր, հա-
րիւր պիտի մնայ, և ուսկից որ հա-
րիւր կ'ելլէր, տասը պիտի մնայ
4 Իսրայէլի տանը։ Քանզի Տէրը
Իսրայէլի տանը այսպէս կ'ըսէ.
[Բ]Զիս փնտռեցէք, [Գ]ու ապրիք.
5 Բայց [Դ]Բեթէլը մի փնտռէք, ու
Գաղգաղա մի մտնէք, ու [Ե]Բեր-
սաբէէ մի անցնիք. քանզի Գաղ-
գաղան անշուշտ գերութեան պի-
տի քշուի, ու [Զ]Բեթէլը պիտի
6 ոչնչանայ։ [Է]Տէրը փնտռեցէք, որ
ապրիք. չըլլայ որ Յովսէփին տանը
մէջ կրակի պէս իյնայ, և զանիկայ
ուտէ, ու Բեթէլի մէջ մարող չըլ-
7 լայ։ Դուք որ [Ը]իրաւունքը օ-
շինդրի կը դարձընէք, ու ար-
դարութիւնը գետինը կը ձգէք,
8 փնտռեցէ՛ք զանիկայ, որ [Թ]Բազ-
մաստեղը ու Հայկը շինեց, ու
մահուան ստուերը՝ առաւօտեան

Ն. Ք. ՉՔ. 787
[Կ] Յովել. Ա. 4։ Բ. 25։
[Հ] Ել. Թ. 3, 6։ ԺԲ. 29։ Բ Օր. ԻԸ. 27, 60։ Սաղ. ՀԸ. 50։
[†] Կամ՝ կերպով։
[Ձ] Հմր 6։
[Ղ] Ծն. ԺԹ. 24, 25։ Եսա. ԺԳ. 19։ Երեմ. ԽԹ. 18։
[Ճ] Զաք. Գ. 2։ Յուդ. 23։
[Մ] Հմր 6։
[Յ] Տես Եզեկ. ԺԴ. 5։ ԻԲ. 30։ Ղուկ. ԺԴ. 31, 32։
[Ն] Սաղ. ՃԼԹ. 2։ Դան. Բ. 28։
[Շ] Գլ. Ե. 8։ Ը. 9։
[Ո] Բ Օր. ԼԲ. 13։ ԼԳ. 29։ Միք. Ա. 3։
[Չ] Եսա. ԽԷ. 4։ Երեմ. Ժ. 16։ Գլ. Ե. 8։ Թ. 6։
[–] Երեմ. Է. 29։ Եզեկ. ԺԹ. 1։ ԻԷ. 2։
[Բ] Բ Մն. ԺԵ. 2։ Երեմ. ԻԹ. 13։ Հմր 6։
[Գ] Եսա. ԾԵ. 3։
[Դ] Գլ. Դ. 4։
[Ե] Գլ. Ը. 14։
[Զ] Ովս. Դ. 15։ Ժ. 8։
[Է] Հմր 4։
[Ը] Գլ. Զ. 12։
[Թ] Յոբ. Թ. 9։ ԼԸ. 31։

Ն. Ք. Ղ Ք. 787

ՃՍաղ. ծդ. 20։ Է Յոբ. ԼԲ. 31։ Գլ. Թ. 6։ Ը Գլ. Գ. 13։ Խ Ես. ԻԹ. 21։ Ծ Գ Թագ. ԻԲ. 8։ Կ Բ Օր. ԻԸ. 30. 38. 39։ Միք. Զ. 15։ Սոփ. Ա. 13։ Անգ. Ա. 6։ Հ Գլ. Բ. 6։ Ձ Ես. ԻԹ. 21։ Գլ. Բ. 7։ Ղ Գլ. Զ. 10։ Ճ Միք. Գ. 11։ Մ Սաղ. ԼԴ. 14։ ՂԷ. 10։ Հռով. ԺԲ. 9։ Յ Եւ. Լ. 30։ Դ Թագ. ԺԹ. 4։ Յովէլ. Բ. 14։ Ն Երեմ. Թ. 17։ Շ Եւ. ԺԲ. 12։ Նաւ. Ա. 12։ Ո Ես. Ե. 19։ Երեմ. ԺԷ. 15։ Եզեկ. ԺԲ. 22. 27։ Բ Պետ. Գ. 4։ Չ Երեմ. Լ. 7։ Յովէլ. Բ. 2։ Սոփ. Ա. 15։ Պ Երեմ. ԽԸ. 44։ Ջ Առակ. ԽԱ. 27։ Ես. Ա. 11-16։ Երեմ. Զ. 20։ Ովս. Ը. 13։ Ռ Ղև. ԻԶ. 31։ Ս Ես. ԿԶ. 3։ Միք. Զ. 6. 7։

ւորէ կը դարձընէ, ծև ցորեկը գի-
շերուան պէս կը մթընցընէ, ու
Է ծովուն ջուրերը կը կանչէ, ու
զանոնք երկրի երեսին վրայ կը
թափէ. Ը անոր անունը Եհովայ է.
9 Որ զօրաւորին վրայ յանկարծ կո-
րուստ կը բերէ, ու կորուստը մին-
չև ամրոցը կը հասնի։
10 Խ Դրանը մէջ յանդիմանողը կ'ա-
տեն, ու Ծ շիտակ խօսողէն կը զզ-
11 ղուին։ Ուստի՝ որովհետև աղքա-
տին վրայ կը կոխէք, ու անկէ
ցորենի պարգևներ կ'առնէք, Կ Եւ
Կ տաշուած քարէ տուներ շինէք,
բայց անոնց մէջը պիտի չբնակիք.
Կ եւ ցանկալի այգիներ տնկէք,
բայց անոնց գինին պիտի չխմէք։
12 Քանզի ձեր շատ յանցանքները,
ու ձեր ծանր մեղքերը գիտեմ.
Հ արդարը կը նեղէք, կաշառք
կ'առնէք, ու դրանը մէջ Ձ տնանկ-
13 ներուն դատը կը ծռէք։ Անոր
համար խելացի եղողը ան ատենը
Ղ պիտի լռէ. քանզի ժամանակը
14 չար է։ Բարութիւն փնտռեցէք,
ու չէ թէ չարութիւն, որպէս զի
ապրիք. և այսպէս զօրաց Տէր Ա-
տուածը ձեզի հետ պիտի ըլլայ,
15 Ճ ինչպէս որ ըսիք։ Մ Չարութիւնը
ատեցէք, ու բարութիւնը սիրե-
ցէք, և դրանը մէջ իրաւունքը
հաստատեցէք. Յ թերևս զօրաց Տէր
Աստուածը՝ Յովսէփին մնացորդին
ողորմութիւն ընէ։
16 Անոր համար զօրաց Աստուածը՝
Տէր Եհովան այսպէս կ'ըսէ. Ամէն
հրապարակներու մէջ ողբ պիտի
ըլլայ, ու ամէն փողոցներու մէջ՝
Վա՜յ վա՜յ՝ պիտի ըսեն, ու երկրա-
գործը սուգի, ու Ն ողբ գիտցողնե-
17 րը՝ ողբալու պիտի կանչեն։ Եւ
ամէն այգիներու մէջ ողբ պիտի
ըլլայ. քանզի Շ քու մէջէդ պիտի
անցնիմ՝ կ'ըսէ Տէրը։
18 Ո Վա՜յ անոնց՝ որ Տէրոջը օրուան
կը ցանկան. ձեզի ի՞նչ պիտի ըլ-
լայ Չ Տէրոջը օրը. անիկայ խաւար
19 է, և չէ թէ լոյս. Պ ինչպէս երբոր
մարդ մը առիւծին երեսէն փախչի,
ու արջ մը անոր հանդիպի, և
կամ տունը մտնէ, ու ձեռքը պա-
տին վրայ կռթընցընէ, և զանիկայ
20 օձը խածնէ։ Ահա Տէրոջը օրը
խաւար է, և չէ թէ լոյս, ու անոր
մէջը մթախուղ կայ, և չէ թէ
պայծառութիւն։
21 Ջ Ձեր տօները կ'ատեմ ու կը
մերժեմ, և ձեր հանդիսաւոր ժո-
ղովներուն մէջ՝ Ռ հոտ պիտի չառ-
22 նեմ։ Ս Թէ որ ինծի ողջակէզներ,
ու ձեր հացի ընծաները մատու-
ցանէք ալ, պիտի չընդունիմ, և
ձեր գէր անասուններուն խաղա-
ղութեան զոհերուն պիտի չնայիմ։
23 Քու երգերուդ աղաղակը ինծմէ
հեռացուր. քանզի քու տաւիղնե-
րուդ եղանակը պիտի չլսեմ։
24 Տ Բայց իրաւունքը ջուրի պէս թող
վազէ, ու արդարութիւնը՝ զօրա-
25 ւոր գետի պէս։ Ր Միթէ անապա-
տին մէջ քառասուն տարի ինծի զո-
հեր ու ընծանե՞ր մատուցիք, ով
26 Իսրայէլի տունը. Հապա դուք
Ց ձեր Մողոքի խորանները, ու ձեր
Քիունի կուռքերը, և ձեզի համար
շինած աստուածներնուդ աստղը
27 կրեցիք։ Ուստի ձեզ Ւ Դամաս-
կոսէն անդին գերի պիտի քշեմ,
կ'ըսէ Տէրը, Փ որուն անունը Զօ-
րաց Աստուած է։

Ն. Ք. Ղ Ք. 787

Տ Ովս. Զ. 6։ Միք. Զ. 8։ Ր Բ Օր. ԼԲ. 17։ Յես. ԻԴ. 14։ Եզեկ. Ի. 8. 16. 24։ Գործ. Է. 42. 43։ Տես Ես. ԽԴ. 23։ Ց Դ Թագ. ԺԱ. 33։ Ւ Դ Թագ. ԺԷ. 6։ Փ Գլ. Դ. 13։

## ԳԼ. Զ.

1 Իսրայէլի հեշտասիրութիւնը 7 երկրին ամա-
յութեամբը պիտի պատժուէր. 12 Նոյնպէս
ալ անոնց կամակորութիւնը։

1 Ա Վա՜յ Սիօնի մէջ հանգիստ բնա-
կողներուն, ու Սամարիայի
լեռանը վրայ ապահովութեամբ
նստողներուն, Բ ազգաց գլուխին
երևելիներուն՝ որ Իսրայէլի տունը
2 անոնց կը դիմէ։ Գ Քաղանէ Դ ան-
ցէք, ու տեսէք, ու անկէ Ե մեծ
Եմաթը գացէք, ու Զ Փղշտացւոց
Գէթը իջէք. Է միթէ անոնք աս
թագաւորութիւններէն աղէ՞կ են,
կամ անոնց սահմանը՝ ձեր սահմա-
3 նէն մե՞ծ է։ Ը Վա՜յ անոնց՝ որ չար
օրը Թ կը հեռացընեն, ու Ժ բռնու-
4 թեան աթոռը կը մօտեցընեն, Փը-
ղոսկրեայ մահիճներու մէջ կը պառ-
կին, ու իրենց անկողիններուն վրայ
կ'երկըննան, և հօտերէն գառնուկ-
ները, ու գոմերու մէջէն՝ պարարտ
5 որթերը կ'ուտեն, Ի Ժ Դաւիթի ձայ-
նով խաղ կը կանչեն, ու Լ Դաւի-
թին պէս՝ իրենց երաժշտական
6 գործիքներ կը հնարեն, Գաւաթ-
ներով գինի կը խմեն, ու ծանրա-
գին եղերով կ'օծուին, և Յովսէփին
7 բեկմանը վրայ չեն ցաւիր։ Անոր
համար հիմա առջի գերիներուն հետ
գերի պիտի քշուին. ու անկողիննե-
րու վրայ երկընցողներուն ուրախու-
թեան ձայնը պիտի վերնայ։
8 Խ Տէր Եհովան իր անձին վրայ եր-
դում ըրաւ, կ'ըսէ զօրաց Տէր Աս-
տուածը. ես Յակոբին պարծան-
քէն կը զզուիմ, ու անոր պալատ-
ները կ'ատեմ, և քաղաքը ու բոլոր
անոր մէջը եղողը՝ Ծ թշնամին պիտի
9 մատնեմ. Ու թէ որ մէկ տան մէջ
տասը մարդ մնալու ըլլայ, անոնք
10 ալ պիտի մեռնին։ Եւ մէկուն
հօրեղբայրը, կամ դիակը այրող
մարդը զանիկայ պիտի վերցընէ,
ոսկորները տունէն դուրս հանելու

Ա Ղուկ. Զ. 24։ Բ Ել. ԺԹ. 5։ Գ Ես. Ժ. 9։ Դ Երեմ. Բ. 10։ Ե Դ Թագ. ԺԸ. 34։ Զ Բ Մն. ԻԶ. 6։ Է Նաւ. Գ. 8։ Ը Գլ. Ե. 18։ Թ. 10։ Թ Եզեկ. ԺԲ. 27։ Ժ Սաղ. ՂԴ. 20։ Գլ. Ե. 12։ Հմր 12։ Ի Ես. Ե. 12։ Լ Ա Մն. ԻԳ. 5։ Խ Երեմ. ԾԱ. 14։ Եբր. Զ. 13. 14. 17։

Ն. Ք. ԴՃ. 787

համար, ու տանը մէջ եղողին պի-
տի ըսէ. Ալ ուրիշ մէկը կա՞յ քովդ.
և անիկայ պիտի ըսէ. Ո՛չ. ու
միւսը պիտի ըսէ. Լո՛ւռ կեցիր.
քանզի Տէրոջը անունը յիշելու
11 ատեն չէ։ Վասն զի ահա Տէրը կը
հրամայէ. ու մեծ տունը կործա-
նումով, ու պզտիկ տունը պատա-
ռումով պիտի զարնէ։
12 Միթէ ձիերը ապառաժի վրայ
կը վազե՞ն. կամ անոր վրայ եզներով
կը հերկուի՞. քանզի դուք իրա-
ւունքը՝ դառնութեան, և արդա-
րութեան պտուղը՝ օշինդրի դար-
13 ձուցիք. Ո՛վ ոչինչ բանով ուրա-
խացողներ, որ կ'ըսէք թէ Չէ՞ որ
մեր ուժովը մեզի եղջիւրներ առինք։
14 Անոր համար ահա ես ով Իսրա-
յէլի տունը՝ ձեր վրայ մէկ ազգ մը
ոտք պիտի հանեմ, կ'ըսէ զօրաց
Տէր Աստուածը, ու ձեզ Եմաթի
մուտքէն մինչև անապատի ձորը
պիտի նեղեն։

ծ Գլ. Ե. 13։
ժ Գլ. Ը. 3։
ի Եզ. ԽԶ. 11։
լ Գլ. Գ. 15։
խ Ովս. Ժ. 4։ Գլ. Ե. 7։
ծ Երեմ. Ե. 15։
կ Թուոց. ԼԴ. 8։ Գ Թագ. Ը. 65։

## ԳԼ. Է

1 Մարախներու, 4 և կրակի դատաստանները՝ Ամովսին աղօթքովը կ'արգիլուին։ 7 Գնտակի լարով շինուած պատի մը օրինակովը կը ցուցուի Իսրայէլին մերժուիլը։ 10 Ամասիա ամբաստանութիւն կ'ընէ Ամովսին վրայով։ 14 Ամովս կը յայտնէ իր կոչումը, 16 և Ամասիային վրայ գալու պատիժը։

1 Տէր Եհովան ինծի այսպէս ցու-
ցուց, որ ահա վերջին խոտին
բուսնելուն սկիզբը՝ մարախներ ըս-
տեղծեց. և ահա վերջին խոտը՝
թագաւորին հունձքէն ետքն էր։
2 Ու եղաւ որ՝ անոնք երկրին խոտը
բոլորովին ուտելէն ետքը, ես ըսի.
Ո՛վ Տէր Եհովայ՝ կ'աղաչեմ, նե-
րէ. Յակոբը ինչպէս պիտի կանգ-
3 նի, քանզի քիչուոր է։ Տէրը ա-
սոր համար զղջաց, Անիկայ չըլլայ,
ըսաւ Տէրը։
4 Տէր Եհովան ինծի այսպէս ցու-
ցուց, որ ահա Տէր Եհովան կրակը
կը կանչէր որ անով դատաստան
ընէ. և անիկայ մեծ անդունդը կե-
5 րաւ, ու արտերը սպառեց։ Ու
ես ըսի. Ո՛վ Տէր Եհովայ՝ կ'աղա-
չեմ, դադարէ. Յակոբը ինչպէս
պիտի կանգնի, քանզի քիչուոր է։
6 Տէրը ասոր համար զղջաց, Անիկայ
ալ չըլլայ, ըսաւ Տէր Եհովան։
7 Ինծի այսպէս ցուցուց, որ ահա
Տէրը գնտակի լարով շինուած պա-
րիսպի մը վրայ կայներ էր, ու ձեռ-
8 քը գնտակ մը կար։ Եւ Տէրը
ինծի ըսաւ. Ի՞նչ կը տեսնես՝ ով
Ամովս։ Ու ես ըսի. Գնտակ մը։
Եւ Տէրը ըսաւ. Ահա ես իմ ժողո-
վուրդիս Իսրայէլին մէջը գնտակ
մը կը դնեմ. ալ անոնց յանցանքնե-
9 րը անտես պիտի չընեմ։ Եւ
Իսահակին բարձր տեղերը աւերակ
պիտի ըլլան, ու Իսրայէլին սրբա-
րանները պիտի աւրին, ու Յերո-
բովամին տանը վրայ սրով պիտի
ելլեմ։
10 Եւ Բեթէլին քուրմը Ամասիա՝
Իսրայէլի Յերոբովամ թագաւորին
ղրկեց՝ ըսելով. Իսրայէլի
տանը մէջ՝ Ամովս քեզի դէմ դա-
ւաճանութիւն կ'ընէ. երկիրը չը-
կրնար անոր բոլոր խօսքերը տա-
11 նիլ. Քանզի Ամովս այսպէս կ'ըսէ.
Յերոբովամը սրով պիտի մեռնի,
ու Իսրայէլը իր երկրին վրայէն ան-
շուշտ գերութեան պիտի երթայ։
12 Եւ Ամասիա ըսաւ Ամովսին.
Ո՛վ տեսանող՝ գնա՛ Յուդայի եր-
կիրը փախիր, ու հոն հաց կեր, և
13 հոն մարգարէութիւն ըրէ, Ու
Բեթէլի մէջ ալ մարգա-
րէութիւն մի՛ ըներ, քանզի անի-
կայ թագաւորին սրբարանն է, ու
թագաւորութեանը տունն է։
14 Եւ Ամովս պատասխան տուաւ,
ու Ամասիային ըսաւ. Ես ո՛չ մար-
գարէ էի, ոչ ալ մարգարէի որ-
դի. Հովիւ էի ես արջառներու,
15 ու մոլաթուզ քաղող էի. Եւ Տէրը
զիս հօտին ետևէն առաւ, և Տէրը
ինծի ըսաւ. Գնա՛, իմ ժողովուր-
դիս Իսրայէլին մարգարէութիւն
16 ըրէ։ Եւ հիմա Տէրոջը խօսքը մը-
տիկ ըրէ. դուն կ'ըսես որ Իսրայէլի
համար մարգարէութիւն մի՛ ըներ.
ու Իսահակի տանը վրայով խօսք
17 մի՛ խօսիր։ Անոր համար Տէրը
այսպէս կ'ըսէ. Քու կնիկդ քաղա-
քին մէջը պոռնկութիւն պիտի ընէ,
և քու տղաքներդ ու աղջիկներդ
սրով պիտի իյնան. ու քու երկիրդ
լարով պիտի բաժնուի, և դուն
պղծ երկրի վրայ պիտի մեռնիս.
ու Իսրայէլը իր երկրին վրայէն ան-
շուշտ գերութեան պիտի երթայ։

ա Եզ. ԾԱ. 19։ Հմր 5։
բ Օր. ԼԲ. 36։ Հմր 6։
Յովել. Գ. 10։
Յակ. Ե. 16։
գ Հմր 2, 3։
դ Տես Դ Թագ. ԻԱ. 13։ Եզ. ԻԲ. 17։ ԼԴ. 11։ Ողբ. Բ. 8։
ե Գլ. Ը. 2։ Միք. Է. 18։

Ն. Ք. ԴՃ. 787

զ Տես Ծն. ԻԶ. 23։ ԽԶ. 1։ Գլ. Ե. 5։ Ը. 14։
է Տես Դ Թագ. ԺԵ. 10։
ը Գ Թագ. ԺԲ. 32։
թ Դ Թագ. ԺԴ. 23։
ժ Գլ. Բ. 12։
ի Գ Թագ. ԺԲ. 32։ ԺԳ. 1։
լ Գ Թագ. Ի. 35։ Դ Թագ. Բ. 5։ Դ. 38։ Զ. 1։
խ Գլ. Ա. 1։ Զաք. ԺԴ. 5։
ծ Միք. Բ. 6։
կ Տես Երեմ. ԻԸ. 12։ ԻԹ. 21, 25, 31, 32։
հ Ես. ԺԳ. 16։ Ովս. Դ. 13։ Ե. 11։ Զաք. ԺԴ. 2։

## ԳԼ. Ը

1 Կողով մը լեցուն ամառնային պտուղներու օրինակով կը ցուցուի թէ Իսրայէլին պատուհասը մօտեցած է։ 4 Մարգարէն կը յանդիմանէ անիրաւները, 11 ու կը սպառնայ Աստուծոյ խօսքին սովը։

1 Տէր Եհովան ինծի այսպէս ցու-
ցուց. և ահա մէկ կողով մը
2 ամառնային պտուղ։ Ու ըսաւ.
Ի՞նչ կը տեսնես՝ ո՛վ Ամովս. ու ես
ըսի. Կողով մը ամառնային պը-
տուղ։ Եւ Տէրը ինծի ըսաւ.
Իմ ժողովուրդիս Իսրայէլին վրայ
վախճան հասած է. ալ անոնց
յանցանքները անտես պիտի չընեմ։
3 Ու ան օրը *պալատին երգերը հա-
ռաչանքներ պիտի ըլլան, կ'ըսէ
Տէր Եհովան. շատ մեռելներ պիտի

ա Եզեկ. Է. 2։
բ Գլ. Է. 8։
* Կամ՝ տաճարի
գ Գլ. Ե. 23։

Ն. Ք. Գ. Ք. 787

Գլ. Գ. 9, 10։ Սաղ. ԺԲ. 4։ Առակ. Լ. 14։ Նեեմ. ԺԳ. 15, 16։ Միք. Զ. 10, 11։ Գլ. Բ. 6։ Ովս. Ը. 13։ Թ. 9։ Ովս. Դ. 3։ Գլ. Թ. 5։

791

Յոբ. Ե. 14։ Ես. ԺԳ. 10։ ԾԹ. 9, 10։ Երեմ. ԺԵ. 9։ Միք. Գ. 6։ Ես. ԺԵ. 2, 3։ Երեմ. ԽԸ. 37։ Եզեկ. Է. 18։ ԻԷ. 31։ Երեմ. Զ. 26։ Զաք. ԺԲ. 10։ Դատ. Գ. 1։ Սաղ. ՀԴ. 9։ Եզեկ. Է. 26։ Բ Օր. Թ. 21։ Ովս. Դ. 15։ Գլ. Ե. 5։

ըլլան . Ու շատ ամէն տեղ լը-
ռութեամբ պիտի նետեն ։
4 Ասիկա մտիկ ըրէք , դուք որ
տնանկը կլլելու , ու երկրին աղ-
քատները կորսնցընելու կը ջան-
5 կաք , Ու կ'ըսէք . Ամսագլուխը
ե՞րբ պիտի անցնի , որ ցորեն
ծախենք , և Շաբաթը՝ որ ցորենը
ծախու հանենք , ու արդուն պըզ-
տիկցընենք , ու սիկղը մեծցընենք ,
և նենգութեամբ խարդախ կշիռք-
6 ներ գործածենք . Որ աղքատները
ստակով , ու տնանկները զոյգ մը
կօշիկով ծախու առնենք , ու ցո-
7 րենին խոտանը ծախենք ։ Տէրը
Յակոբին մեծվայելչութեանը վրայ
երդում ըրաւ , ըսելով . Անոնց բո-
լոր գործքերը յաւիտեան պիտի չը-
8 մոռնամ ։ Չէ՞ որ աս բանիս հա-
մար երկիրը պիտի դողայ , ու ամէն
անոր մէջ բնակողը սուգ պիտի
բռնէ , և բոլոր երկիրը գետի պէս
վեր պիտի ելլէ , ու պիտի քշուի ու
պիտի ընկղմի որպէս թէ Եգիպ-
9 տոսի գետով ։ Եւ պիտի ըլլայ
որ այն օրը՝ կ'ըսէ Տէր Եհովան ,
արեւը՝ կէս օրուան ատենը՝ մարը
պիտի մտցընեմ , ու ցորեկուան
լոյսին ատենը՝ երկիրը պիտի խա-
10 ւարեցընեմ ։ Եւ ձեր տօները՝ սու-
գի , ու ձեր բոլոր երգերը ողբի
պիտի դարձընեմ . Ու ամէն մէջ-
քերու վրայ քուրձ՝ և ամէն գլխու
վրայ կնտութիւն պիտի բերեմ .
Ու երկրին վրայ սուգ պիտի բերեմ՝
մէկ հատիկ զաւակի համար եղած
սուգին պէս , և անոր վախճանը՝
դառնութեան օրուան պէս պիտի
ըլլայ ։
11 Ահա օրեր կու գան , կ'ըսէ Տէր
Եհովան , որ երկրին վրայ սով մը
պիտի խրկեմ . չէ թէ հացի սով ,
և չէ թէ ջուրի ծարաւ . հապա
Տէրոջը խօսքերը լսելու սով ։
12 Ու մէկ ծովէն մէկալ ծովը , և հիւ-
սիսէն մինչև արևելք պիտի թա-
փառին . Տէրոջը խօսքը փնտռելու
համար՝ հոս հոն պիտի պտըտին ,
13 բայց պիտի չգտնեն ։ Այն օրը գե-
ղեցիկ կոյսերը , ու երիտասարդնե-
14 րը ծարաւով պիտի մարին , Որոնք
Սամարիայի յանցանքովը երդ-
ռում կ'ընեն ու կ'ըսեն . Կենդանի
է քու աստուածդ , ով Դան , ու
կենդանի է Բերսաբէէին ճամ-
բան . անոնք պիտի իյնան , ու
մէյմըն ալ պիտի չելլեն ։

## ԳԼ. Թ

1 Գալու կործանման ստուգութիւնը ։ 11 Դաւիթին խորանին վերականգնումը ։

1 Տէրը տեսայ որ սեղանին վրայ
կայներ էր , ու ըսաւ . Խոյակին
զարկ , որ սեմերը դողան , և զա-
նոնք կտոր կտոր ըրէ անոնց ամե-
նուն գլխուն վրայ . ու անոնց մնա-
ցորդը սրով պիտի մեռցընեմ . Ա-
նոնց փախստականը պիտի չկարե-
նայ փախչիլ , ու անոնց ազա-
տուածը պիտի չկարենայ ազատիլ ։
2 Թէև անոնք մինչև դժոխքը փո-
րեն , իմ ձեռքս անկէ պիտի առնէ
զանոնք . Ու թէև երկինքը ել-
լեն , զանոնք անկէ պիտի իջեցը-
3 նեմ . Ու թէև Կարմեղոսի գլուխը
պահուըտին , զանոնք պիտի փըն-
տըռեմ , անկէ պիտի առնեմ . ու
թէև իմ աչքերուս առջևէն ծովուն
խորութեանը մէջ ծածկուին , հոն
օձին պիտի հրամայեմ , ու զանոնք
4 պիտի խայթէ . Ու թէև անոնք
իրենց թշնամիներուն առջևէն գե-
րութեան երթան , հոն սուրին
պիտի հրամայեմ , ու զանոնք պի-
տի մեռցընէ . և իմ աչքս անոնց
վրայ պիտի դնեմ չարիքի համար ,
և ոչ թէ բարիքի համար ։
5 Քանզի զօրաց Տէր Եհովան ինքն
է որ երկրիս կը դպչի , ու անիկայ
կը հալի , ու անոր բոլոր բնակիչ-
ները սուգ կը բռնեն , և բոլոր եր-
կիրը գետի պէս վեր կ'ելլէ , ու
կ'ընկղմի՝ որպէս թէ Եգիպտոսի
6 գետով ։ Ինքն է որ երկնից մէջ
իր վերնատուները կը շինէ , ու
անոր կամարը երկրիս վրայ կը հիմ-
նէ , ծովուն ջուրերը կը կանչէ , ու
զանոնք երկրի երեսին վրայ կը
թափէ . Անոր անունը Եհովայ
է ։
7 Միթէ դուք ինծի Եթեովպա-
ցւոց որդիներուն պէս չէ՞ք , ով Իս-
րայէլի որդիք՝ կ'ըսէ Տէրը . չէ՞ որ
Իսրայէլը Եգիպտոսի երկրէն , ու
Փղշտացիները Կափթորէն , և Ա-
8 սորիները Կիրէն հանեցի ։ Ահա
Տէր Եհովային աչքերը աս մե-
ղաւոր թագաւորութեանը վրայ
է , ու զանիկայ երկրիս երեսին
վրայէն պիտի կորսնցընեմ . սա-
կայն Յակոբին տունը բոլորովին
պիտի չկորսնցընեմ , կ'ըսէ Տէրը ։
9 Քանզի ահա ես կը հրամայեմ , ու
Իսրայէլի տունը բոլոր ազգաց մէջ
պիտի խարբալեմ , ինչպէս որ ցո-
րենը մաղով կը խարբալեն . բայց
մէկ *հատ մը գետինը պիտի չիյ-
10 նայ ։ Իմ ժողովուրդիս բոլոր մե-
ղաւորները սրով պիտի մեռնին ,
որոնք կ'ըսեն թէ՝ Չարիքը մեր
վրայ պիտի չհասնի , ու մեր առ-
ջևը պիտի չառնէ ։
11 Այն օրը Դաւիթին ինկած խորա-
նը պիտի կանգնեմ , և անոր փլած-
ները պիտի նորոգեմ , ու աւրած-
ները պիտի կանգնեմ , և զանիկայ

Ն. Ք. Գ. Ք. 787

Գլ. Բ. 14։ Սաղ. ՃԼԹ. 8, 7։ Յոբ. Ի. 6։ Երեմ. ԾԱ. 53։ Աբդ. 4։ Ղև. ԻԶ. 33։ Բ Օր. ԻԸ. 65։ Եզեկ. Ե. 12։ Ղև. ԺԷ. 10։ Երեմ. ԽԴ. 11։ Միք. Ա. 4։ Գլ. Ը. 8։ Սաղ. ՃԴ. 3, 13։ Գլ. Ե. 8։ Գլ. Դ. 13։ Երեմ. ԽԷ. 4։ Բ Օր. Բ. 23։ Երեմ. ԽԷ. 4։ Գլ. Ա. 5։ Ա. 4։ Երեմ. Լ. 11։ ԼԱ. 35, 36։ Աբդ. 16, 17։

* Կամ՝ խիճ

Գլ. Զ. 3։ Գործ. ԺԵ. 16, 17։

հին օրերուն պէս պիտի շինեմ.
12 Որպէս զի անոնք՝ որոնց վրայ իմ
անունս կոչուած է, Եդովմին մը-
նացորդը, ու բոլոր ազգերը ժա-
ռանգեն, կ'ըսէ Տէրը՝ որ աս բանը
13 կ'ընէ։ Ահա օրեր կու գան, կ'ըսէ
Տէրը, որ հերկողը՝ հնձողին, և խա-
ղող կոխողը՝ սերմանացանին պիտի
հասնի. ու լեռները քաղցու պի-
տի կաթեցնեն, և ամէն բլուրները
14 պիտի հալին։ Ու իմ ժողովուր-
դիս Իսրայէլին գերութիւնը պիտի
դարձնեմ. ու աւրած քաղաք-
ները պիտի շինեն ու անոնց մէջ
բնակին. և այգիներ պիտի տնկեն,
ու անոնց գինին խմեն, և պար-
տէզներ պիտի շինեն, ու անոնց
15 պտուղները ուտեն։ Եւ զանոնք
իրենց երկրին վրայ պիտի տնկեմ.
ու մէյմըն ալ պիտի չխլուին ի-
րենց երկրէն, որ իրենց տուի, կ'ը-
սէ քու Տէր Աստուածդ։

# ՄԱՐԳԱՐԷՈՒԹԻՒՆ ԱԲԴԻՈՒ

1 Եդովմի կործանումը 3 իր հպարտութեանը համար, 10 ու իր անիրաւութեանը համար, որ Յակոբին ըրեր էր։ 17 Յակոբին փրկութիւնը ու յաղթութիւնը։

1 Աբդիու տեսիլքը։
Տէր Եհովան Եդովմի վրայով
այսպէս կ'ըսէ. Տէրոջմէ լուր լսե-
ցինք. ու ազգերուն դեսպան խրր-
կուեցաւ, ըսելով. Ելէ՛ք, ու անոր
2 վրայ պատերազմի ելլենք։ Ահա
քեզ ազգերու մէջ պզտիկ ըրի.
3 դուն խիստ անարգուած ես։ Քու
սրտիդ հպարտութիւնը քեզ խա-
բեց, ո՛վ վէմին խոռոչներուն մէ-
ջը բնակող, ու բարձր բնակարան
ունեցող, որ սրտիդ մէջ կ'ըսես.
Ո՞վ զիս գետինը պիտի իջեցնէ։
4 Թէև արծիւի պէս բարձրանաս,
և քու բոյնդ աստղերուն մէջը դը-
նես, քեզ անկէ պիտի իջեցնեմ,
5 կ'ըսէ Տէրը։ Թէ որ քեզի գողեր
կամ գիշերային աւազակներ գա-
յին, (ի՜նչպէս կործանեցար.)
անոնք իրենց բաւական եղածին
չափ պիտի չգողնայի՞ն. թէ որ
քեզի կթողներ գային, չմիթէ ճի-
6 ւեր պիտի չթողուի՞ն։ Եսաւը
ի՜նչպէս քննուեցաւ. անոր ծա-
7 ծուկ տեղերը փնտռուեցան։ Քու
բոլոր դաշնակիցներդ՝ քեզ մինչև
սահմանը խրկեցին. քեզի հետ
խաղաղութիւն ունեցող մարդիկ-
ները քեզ խաբեցին, ու քեզ
յաղթեցին. քու հացդ ուտողները՝
քու տակդ որոգայթ դրին. անոր
քովը հանճար չկայ։
8 Ահա ան օրը՝ կ'ըսէ Տէրը, Ե-
դովմէն իմաստուններըը, ու Եսաւի
լեռնէն հանճարը բնաջինջ պիտի
9 ընեմ։ Եւ քու զօրաւորներդ՝
ո՛վ Թեման՝ պիտի զարհուրին.
որպէս զի Եսաւի լեռնէն ամէն մարդ
10 սպաննուելով կոտրուի։ Քու
եղբօրդ Յակոբին եղած անիրաւու-
թեանը համար՝ ամօթը քեզ պիտի
ծածկէ, ու յաւիտեան բնաջինջ
11 պիտի ըլլաս։ Անոր դիմացը կայ-
նած օրդ՝ երբոր օտարազգիները
անոր զօրքը գերի առին, ու օտար-
ները անոր դռները մտան, ու Ե-
րուսաղէմի վրայ վիճակ ձգեցին,
դուն ալ անոնց մէկուն պէս էիր։
12 Ու պէտք չէր որ քու եղբօրդ օրը,
անոր օտարութեան օրը ուրախութեամբ
նայէիր, և Յուդայի որդւոցը վրայ՝
անոնց կորստեան օրը խնդայիր, ու
անոնց նեղութեան օրը քու բերանդ
13 մեծցնէիր, Ո՛չ ալ իմ ժողովուր-
դիս դուռը՝ անոնց թշուառու-
թեանը օրը մտնէիր, անոնց կոր-
ծանման օրը՝ դուն ալ անոնց չա-
րիքին վրայ նայէիր, և անոնց կոր-
ծանման օրը՝ անոնց ստացուածքին
14 վրայ ձեռք ձգէիր. Եւ ո՛չ անոր
ազատուածները կոտրելու համար՝
ճամբուն բերանը կայնէիր, ու անոր
նեղութեան օրը՝ անոր մնացորդնե-
15 րը մատնէիր։ Քանզի բոլոր ազ-
գերուն վրայ Տէրոջը օրը մօտ է.
քեզի՝ քու ըրածիդ պէս պիտի ը-
նեն. քու հատուցումդ գլուխդ պի-
16 տի դառնայ։ Քանզի ինչպէս որ
դուք իմ սուրբ լեռանս վրայ խմե-
ցիք, բոլոր ազգերն ալ շարունակ
պիտի խմեն. պիտի խմեն, ու պի-
տի կլլեն, ու չեղածի պէս պիտի
ըլլան։
17 Բայց Սիօն լեռանը վրայ փըր-
կութիւն պիտի ըլլայ, և սրբու-
թիւն պիտի ըլլայ. ու Յակոբին
տունը իրենց կալուածքներուն պի-
18 տի տիրեն։ Եւ Յակոբին տունը՝
կրակ, ու Յովսեփին տունը՝ բոց,
ու Եսաւին տունը՝ յարդ պիտի

Ն. Ք. Ծ. Ք. Տրր 587

[դ] Ամով. Թ. 12։
[ե] Սոփ. Բ. 7։

ըլլայ. և անոնց մէջը պիտի բըղխին, ու զանոնք պիտի ուտեն. ու
Եսաւի տանը մնացորդ մը պիտի
չըլլայ. քանզի Տէրը խօսեցաւ։
19 Եւ հարաւայինները՝ [դ] Եսաւի լեռը
պիտի ժառանգեն, [ե] Ու դաշտայինները՝ Փղշտացւոց երկիրը.
Նաև Եփրեմի դաշտը, ու Սամարիայի դաշտը պիտի ժառանգեն.
ու Բենիամին՝ Գաղաադը պիտի ժա-
20 ռանգէ։ Եւ Իսրայէլի որդւոցը աս
զօրքին գերիները՝ Քանանացւոց
եղածը պիտի ժառանգեն [զ] մինչև Սարեփթա, ու Երուսաղէմի գերիները՝ որոնք Սեփարադի մէջ են,
[է] հարաւային քաղաքները պիտի
21 ժառանգեն։ Եւ ազատողներ պիտի ելլեն Սիօն լեռը, Եսաւի լեռը
դատելու համար. ու [ը] Թագաւորութիւնը Տէրոջը պիտի ըլլայ։

Ն. Ք. Ծ. Ք. Տրր 587

[զ] Գ Թագ. ԺԷ. 9, 10։ [է] Երեմ. ԼԲ. 44։ [ը] Սաղ. ԻԲ. 28։ Դան. Բ. 44։ Է. 14, 27։ Զաք. ԺԴ. 9։ Ղուկ. Ա. 33։ Յայտ. ԺԱ. 15։ ԺԹ. 6։

# ՄԱՐԳԱՐԷՈՒԹԻՒՆ ՅՈՎՆԱՆՈՒ

## ԳԼՈՒԽ Ա

Ն. Ք. Ծ. Ք. Տրր 862

1 Յովնան՝ Նինուէ քաղաքը խրկուելով՝ դէպ 'ի Թարսիս կը փախչի։ 4 Ծովուն մէջ փոթորիկ ըլլալով՝ անոր յանցանքը կը յայտնուի. 11 անիկայ ծովը կը ձգուի, 17 ու ձուկէ մը կը կլլուի։

1 Եւ Տէրոջը խօսքը Ամաթիի որ-
դւոյն [ա] Յովնանին եղաւ, ըսե-
2 լով. Ելի՛ր, [բ] Նինուէ մեծ քաղա-
քը գնա, ու անոր դէմ քարոզու-
թիւն ըրէ. քանզի [գ] անոնց չարու-
3 թիւնը իմ առջիս ելաւ։ Բայց
Յովնան [դ] ելաւ որ Տէրոջը երեսէն
Թարսիս փախչի. և [ե] Յոպպէ իջաւ,
ու մէկ նաւ մը գտաւ որ Թարսիս
կ'երթար, և անոր վարձքը տուաւ,
ու անոր մէջը մտաւ, որ անոնց հետ
Թարսիս երթայ [զ] Տէրոջը երեսէն։
4 Եւ [է] Տէրը ծովուն մէջ մեծ հով
մը հանեց, ու ծովուն մէջ մեծ
փոթորիկ մը եղաւ, այնպէս որ
նաւը խորտակուելու վտանգի մէջ
5 էր։ Ու նաւավարները վախցան,
և ամէն մէկը իր աստուծոյն կ'ա-
ղաղակէր. ու [ը] նաւուն մէջի կա-
րասիները ծովը նետեցին, որ ա-
նոնցմով իրենցմէ թեթևցընեն. բայց
Յովնան նաւուն խորշը իջնելով
պառկեր էր, ու խորունկ կը քնա-
6 նար։ Եւ նաւապետը անոր մօտե-
ցաւ, ու անոր ըսաւ. Քեզի ի՞նչ
եղաւ՝ ո՛վ խորունկ քնացող. ելի՛ր
[թ] քու Աստուծոյդ աղաղակէ,
[ժ] գուցէ Աստուած մեզ յիշէ, որ
չկորսուինք։
7 Եւ իրարու ըսին. Եկէք՝ [ի] վիճակ
ձգենք, ու գիտնանք թէ աս չա-
րիքը որո՞ւն պատճառովը մեր վրայ
եկաւ։ Եւ վիճակ ձգեցին. ու
8 վիճակը Յովնանին ելաւ։ Եւ ա-
նոնք ըսին անոր. [լ] Հիմա պատմէ՛
մեզի՝ թէ աս չարիքը որո՞ւն պատ-
ճառովը մեր վրայ եկաւ. քու
գործքդ ի՞նչ է, և ո՞ւսկից կու
գաս, քու երկիրդ ո՞րն է, ու դուն
9 ո՞ր ժողովուրդէն ես։ Եւ անիկայ
ըսաւ անոնց. Ես Եբրայեցի եմ, և
[խ] ծովը ու ցամաքը ստեղծող երկ-
նից Աստուծմէն Եհովայէն կը
10 վախնամ։ Եւ ան մարդիկը խիստ
շատ վախցան, ու անոր ըսին. Ատ
բանը ինչո՞ւ ըրիր. քանզի ան մար-
դիկը գիտցան որ անիկայ Տէրոջը
երեսէն կը փախչէր, ինչու որ ա-
11 նոնց պատմեր էր։ Եւ անոր ը-
սին. Քեզի ի՞նչ ընենք, որ ծովը
մեզմէ դադարի. քանզի ծովը եր-
թալով աւելի կը սաստկանար։
12 Ու անիկայ ըսաւ անոնց. [ծ] Զիս
վերցուցէք, ու զիս ծովը նետե-
ցէք. ու ծովը ձեզմէ պիտի դա-
դարի. քանզի ես գիտեմ որ աս
մեծ փոթորիկը իմ պատճառովս
ձեր վրայ եղաւ։
13 Եւ ան մարդիկը թի քաշելով
կը ջանային նաւը ցամաքը դարձը-
նել. [կ] բայց չկրցան. քանզի ծովը
երթալով կը սաստկանար անոնց
14 վրայ։ Ու Եհովային աղաղակե-
ցին ու ըսին. Ո՛հ, Եհովա՛յ՝ կ'ա-
ղաչենք, աս մարդուս հոգիին հա-
մար չկորսուինք. ու [հ] մեր վրայ
անմեղ արիւն մի՛ դներ. քանզի
դուն՝ ո՛վ Եհովայ, [ձ] ուզածիդ պէս
15 ըրիր։ Եւ Յովնանը վերցուցին, ու
ծովը նետեցին. [ղ] և ծովը իր սաստ-
16 կութենէն դադարեցաւ։ Ու ան
մարդիկը [ճ] Եհովայէն մեծ վախով
վախցան, ու Եհովային զոհ մա-
տուցին՝ և ուխտեր ըրին։
17 Եւ Տէրը մէկ մեծ ձուկի մը հը-
րամայեց որ Յովնանը կլլէ. ու
[մ] Յովնան իրեք օր ու իրեք գիշեր
ձուկին փորը մնաց։

[ա] Դ Թագ. ԺԴ. 25։ Մատ. ԺԲ. 39։
[բ] Ծն. Ժ. 11, 12։ Գլ. Գ. 2, 3։ Դ. 11։
[գ] Ծն. ԺԸ. 20, 21։ Եզր. Թ. 6։ Յակ. Ե. 4։ Յայտ. ԺԸ. 5։
[դ] Գլ. Դ. 2։
[ե] Յես. ԺԹ. 46։ Բ Մն. Բ. 16։ Գործ. Թ. 36։
[զ] Ծն. Դ. 16։ Յոբ. Ա. 12։ Բ. 7։
[է] Սաղ. ՃԷ. 25։
[ը] Գործ. ԻԷ. 18, 19, 38։
[թ] Սաղ. ՃԷ. 28։
[ժ] Յովել. Բ. 14։
[ի] Յես. Է. 14, 16։ Ա Թագ. Ժ. 20, 21։ ԺԴ. 41, 42։ Առակ. ԺԶ. 33։ Գործ. Ա. 26։
[լ] Յես. Է. 19։ Ա Թագ. ԺԴ. 43։
[խ] Սաղ. ՃԼԶ. 6։ Գործ. ԺԷ. 24։
[ծ] Յես. Յով. ԺԱ. 50։
[կ] Առակ. ԻԱ. 30։
[հ] Բ Օր. ԻԱ. 8։
[ձ] Սաղ. ՃԺԵ. 3։
[ղ] Սաղ. ՁԹ. 9։ Ղուկ. Ը. 24։
[ճ] Մար. Դ. 40։ Գործ. Ե. 11։
[մ] Մատ. ԺԲ. 40։ ԺԶ. 4։ Ղուկ. ԺԱ. 30։

Ն. Ք. Ա. Ք.
Իրր 862

ա Սաղ. ճբ. 1 ; ճլ. 1 ; ճխբ. 1 ; Ողբ. գ. 55, 56 :
բ Սաղ. կե. 2 :
գ Սաղ. ձը. 6 :
դ Սաղ. խբ. 7 :
ե Սաղ. լա. 22 :
զ Բ Թագ. ը. 83 :
է Սաղ. կթ. 1 ; Ողբ. գ. 54 :
ը Սաղ. ժզ. 10 :
թ Սաղ. ժը. 6 :
ժ Բ Թագ. ժե. 15 ; Սաղ. լա. 6 ; Երեմ. ժ. 8 ; ժզ. 19 :
ի Սաղ. ծ. 14, 23 ; ծժզ. 17, 18 ; Ովս. ժդ. 2 ; Եբր. ժգ. 15 :
լ Սաղ. գ. 8 :

* Եբր. Աստուծոյ

ա Տես Որ. ժբ. 22 :

բ Մատ. ժբ. 41 ; Ղուկ. ժա. 32 :

## ԳԼ. Բ

1 Յովնանին աղօթքը ; 10 Ձկնէն ցամաք կ'ազատի :

1 Ու Յովնան ձուկին փորէն իր Տէր
2 Աստուծոյն աղօթք ըրաւ . Ու
ըսաւ . ա Իմ նեղութենէս Տէրոջը
աղաղակեցի . բ և անիկայ ինծի պա-
տասխան տուաւ . գերեզմանին փո-
րէն կանչեցի , ու իմ ձայնս լսեցիր :
3 գ Ինչու որ զիս ծովերուն մէջը՝ ան-
դունդը նետեցիր . ու հեղեղները
զիս պաշարեցին . դ Քու ամէն կո-
հակներդ ու ալիքներդ իմ վրայէս
4 անցան : ե Ու ես ըսի . Քու աչքե-
րուդ առջևէն վռնտուեցայ , բայց
տակաւին Քու սուրբ տաճարիդ
5 պիտի նայիմ : է Ջրեր մինչև հոգիս
ջուրերը պաշարեցին . անդունդը
ամէն կողմէն զիս շրջապատեց . կը-
նիւները գլուխս փաթթուեցան :
6 Լեռներուն տակերը իջայ . երկիրը
իր նիգերովը յաւիտեան իմ բոլոր-
տիքս էր . բայց դուն իմ կեանքս
ը գուբէն հանեցիր , ով իմ Տէր
7 Աստուածս : Երբոր հոգիս իմ
վրաս մարեցաւ , Տէրը յիշեցի . թ Ու
իմ աղօթքս՝ քեզի՝ քու սուրբ տա-
8 ճարդ հասաւ : ժ Սուտ ունայնու-
թիւններու նայողները՝ իրենց ողոր-
9 մութիւնը կը թողուն : Բայց ես
ի շնորհակալութեան ձայնով քեզի
զոհ պիտի մատուցանեմ , ու ըրած
ուխտս պիտի կատարեմ . լ Փրկու-
թիւնը Տէրոջն է :
10 Եւ Տէրը ձուկին հրաման ըրաւ .
ու Յովնանը ցամաքը փսխեց :

## ԳԼ. Գ

1 Յովնան երկրորդ անգամ խրկուելով Նինուէա-
ցիներուն կը քարոզէ : 5 Անոնք կ'ապաշխա-
րեն . 10 և Աստուած անոնց կը խնայէ :

1 Ու Տէրոջը խօսքը երկրորդ անգամ
2 Յովնանին եղաւ՝ ըսելով . Ե-
լի՛ր , Նինուէ մեծ քաղաքը գնա ,
ու քարոզէ՛ անոր ան քարոզութիւ-
3 նը՝ որ ես քեզի կը խօսիմ : Եւ
Յովնան Տէրոջը խօսքին համեմատ
ելաւ Նինուէ գնաց : Իսկ Նինուէ
* խիստ մեծ քաղաք մըն էր , իրեք
օրուան ճամբու տարածութեամբ :
4 Եւ Յովնան սկսաւ քաղաքը մըտ-
նել , ու մէկ օրուան ճամբայ պտըտ-
տելով՝ ա կը քարոզէր ու կ'ըսէր .
Դեռ քառասուն օր կայ , ու Նինուէն
պիտի կործանի :
5 Եւ Նինուէի մարդիկը բ Աստու-
ծոյ հաւատալով՝ ծոմապահու-
թիւն քարոզեցին , ու անոնց մե-
ծէն մինչև պզտիկը քուրձ հագան :
6 Եւ այս խօսքը Նինուէի թագաւորին
հասաւ , ու անիկայ իր աթոռէն
ելաւ , ու վրայէն պատմուճանը հա-
նեց , և քուրձ հագաւ , գ ու մոխիրի
7 վրայ նստաւ . դ Եւ Նինուէի մէջ
մունետիկ կանչել տուաւ , ու թա-
գաւորին ու իր մեծամեծներուն հը-
րամանովը պատուիրեց ըսելով .
Մարդ ու անասուն , արջառ ու
ոչխար՝ բան մը չուտեն , չարածին ,
8 ու ջուր չխմեն . Եւ մարդիկները
ու անասունները քուրձ հագնին ,
ու բոլոր ուժով Աստուծոյ աղաղա-
կեն . և ե ամէն մարդ իր չար ճամ-
բայէն , ու զ իր ձեռքերուն մէջ
եղած անիրաւութենէն դառնայ .
9 է Ո՞վ գիտէ . թերևս Աստուած
դառնայ , ու զղջայ , և իր սաստիկ
բարկութենէն դառնայ , ու չկոր-
10 սուինք : ը Եւ Աստուած անոնց
գործքերը տեսաւ , որ իրենց չար
ճամբաներէն դարձան . ու Աս-
տուած զղջաց ան չարիքին համար՝
որ ըսեր էր թէ անոնց ընէ , ու չը-
րաւ զայն :

## ԳԼ. Դ

1 Յովնան Աստուծոյ ողորմութեանը համար նե-
ղանալով՝ 4 դդմենիի մը օրինակով կը յանդի-
մանուի :

1 Ու Յովնան խիստ դժուարեցաւ ,
2 ու նեղացաւ . Ու Տէրոջը ա-
ղօթք ըրաւ , ու ըսաւ . Ո՛հ Տէր ,
երբոր ես դեռ իմ երկիրս էի , իմ
խօսքս աս չէ՞ր . ասոր համար ա ա-
ռաջ Թարսիս փախչելու եղայ :
քանզի գիտէի որ դուն բ ողորմած ,
գթած , երկայնամիտ և բազումո-
ղորմ Աստուած ես , ու չարիքի
3 համար կը զղջաս : գ Եւ հիմա ով
Տէր , կ'աղաչեմ , իմ հոգիս ինծմէ
առ . քանզի դ մեռնիլս՝ ապրելէս
4 աղէկ է : Եւ Տէրը ըսաւ . † Միթէ
այդպէս նեղանալովդ աղէ՞կ կ'ընես :
5 Եւ Յովնան քաղաքէն դուրս ե-
լաւ , ու քաղաքին արևելեան կող-
մը նստաւ , և հոն իրեն տաղաւար
մը շինեց , ու անոր հովանիին տա-
կը նստաւ , մինչև որ տեսնէ թէ
6 քաղաքին ինչ պիտի ըլլայ : Եւ
Տէր Աստուած դդմենիի մը հրամա-
յեց . ու Յովնանին վրայ ելաւ ,
որ անոր գլխուն վրայ հովանի ըլ-
լայ , որպէս զի զանիկայ իր տառա-
պանքէն ազատէ . և Յովնան դդմե-
նիին համար մեծ ուրախութիւնով
ուրախացաւ :
7 Ու հետևեալ օրը երբոր առտու
կ'ըլլար , Աստուած հրամայեց որդի
մը , որ դդմենին զարկաւ , ու ա-
8 նիկայ չորցաւ : Ու եղաւ որ՝ երբ-
որ արևը կը ծագէր , Աստուած հը-
րամայեց որ խորշակաբեր արևելեան
հով մը ըլլայ . ու արևը Յովնանին
գլխուն վրայ զարկաւ , այնպէս որ

Ն. Ք. Ա. Ք.
Իրր 862

գ Յոբ. բ. 8 :
դ բ Մն. ի. 3 ; Յովէլ. բ. 15 :
ե Եսա. ծը. 6 :
զ Եսա. ծթ. 6 :
է Բ Թագ. ժբ. 22 ; Յովէլ. բ. 14 :
ը Երեմ. ժը. 8 ; Ամով. է. 3, 6 :

ա Գլ. ա. 3 :
բ Ել. լդ. 6 ; Սաղ. ձզ. 5 ; Յովէլ. բ. 13 :
գ Գ Թագ. ժթ. 4 :
դ Հմր. Տ :
† Կամ՝ Իրաւո՞ւ է որ խիստ նեղացեր ես :

անիկայ մարեցաւ. ու անիկայ ինքն-
իրեն մահը ուզելով՝ ըսաւ. Մեռ-
նիլս՝ ապրելէս աղէկ է։
9 Եւ Աստուած Յովնանին ըսաւ.
Միթէ դդմենիին համար նեղանա-
լովդ աղէ՞կ կ'ընես. ու անիկայ
ըսաւ. Մինչեւ 'ի մահ նեղանալովս
աղէկ կ'ընեմ։
10 Ան ատենը Տէրը ըսաւ. Դուն
դդմենիին խնայեցիր, որ անոր հա-
մար աշխատութիւն չքաշեցիր, ու
զանիկայ չմեծցուցիր, որ մէկ գի-
շերուան մէջ բուսաւ, ու մէկ գի-
11 շերուան մէջ կորսուեցաւ. Ու ես
պիտի չխնայե՞մ Նինուէին՝ այն
մեծ քաղաքին, որուն մէջը հարիւր
քսան հազարէն աւելի մարդիկ կան,
որոնք աջ ու ձախ ձեռքին տար-
բերութիւնը չեն գիտեր, ու նաեւ
շատ անասուններ։

# ՄԻՔԻԱՅ

# ՄԱՐԳԱՐԷՈՒԹԻՒՆ ՄԻՔԻԱՅ

## ԳԼՈՒԽ Ա

1 Միքիա կը ցուցնէ թէ Աստուծոյ բարկու-
թիւնը բորբոքած է Յակոբին դէմ՝ անոր կռ-
ապաշտութեանը համար. 10 կը յորդորէ որ
սուգ բռնեն։

1 Տէրոջը խօսքը որ Յուդայի թա-
գաւորներուն՝ Յովաթամին,
Աքազին ու Եզեկիային օրերը՝
Մորասթացի Միքիային եղաւ, և
Սամարիայի ու Երուսաղէմի վրա-
յով անոր յայտնուեցաւ։
2 Լսեցէ՛ք՝ ո՛վ բոլոր ժողովուրդ-
ներ. մտի՛կ ըրէ՛ ո՛վ երկիր, ու
անոր *բոլոր բնակիչները, և Տէր
Եհովան ձեզի դէմ վկայ ըլլայ,
Տէրը իր սուրբ տաճարէն։
3 Քանզի ահա Տէրը իր տեղէն կ'ել-
լէ, և պիտի իջնէ, ու երկրին
բարձր տեղերուն վրայ պիտի պտը-
4 տի։ Ու լեռները անոր տակը
պիտի հալին, և հովիտները պիտի
պատռին, կրակին առջեւը հալած
մոմի պէս, ու զառ 'ի վայրէն թա-
5 փուած ջուրի պէս։ Աս ամէնը
Յակոբին յանցանքին համար, ու
Իսրայէլի տանը մեղացը համար է.
Յակոբին յանցանքին պատճառը
ո՞վ է. Սամարիան չէ՞. և Յու-
դայի բարձր տեղերուն պատճառը
6 ո՞վ է. Երուսաղէմը չէ՞։ Ուստի
Սամարիան՝ դաշտի քարակոյտի,
ու այգի տնկելու տեղի պիտի դար-
ձընեմ. անոր քարերը ձորին մէջը
պիտի գլտորցընեմ, ու անոր հի-
7 մերը պիտի բանամ. Եւ անոր բո-
լոր կուռքերը պիտի կոտրտին, ու
անոր բոլոր նուիրուած բաները
կրակով պիտի այրին. և անոր բո-
լոր արձանները բնաջինջ պիտի
ընեմ. քանզի անոնք բոզի վարձ-
քով ժողվեց, ու բոզի վարձքի
պիտի դառնան։
8 Ասոր համար պիտի ողբամ ու
պիտի հառաչեմ. անձածկոյթ ու
մերկ պիտի շրջիմ. ճագարներու
պէս կոծ, ու ջայլամներու պէս
9 սուգ պիտի ընեմ, քանզի անոր
վէրքերը անբժշկելի է. քանզի
մինչեւ Յուդան եկաւ, մինչեւ իմ
ժողովուրդիս դուռը՝ մինչեւ Երու-
10 սաղէմ հասաւ։ Գեթի մէջ մի՛
պատմէք, ու բնաւ մի՛ լաք. Բե-
թափրայի մէջ փոշիի մէջ թա-
11 ւալէ։ Ո՛վ Սափիրի բնակիչ՝ քու
մերկութիւնդ՝ բաց ունենալով
անցիր. Սաանանի բնակիչը դուրս
չելլեր. Բեթեսելի կոծը իր օ-
12 թեւանը ձեզմէ կ'առնէ։ Վասն զի
Մարօթի բնակիչը բարիքի համար
կը վշտանայ. քանզի մինչեւ Երու-
սաղէմի դուռը՝ Տէրոջմէ չարիք
13 իջաւ։ Երիվարը կառքին լծէ՛ ո՛վ
Լաքիսի բնակիչ. Սիոնի աղջկանը
մեղքին սկիզբը անիկայ է. քանզի
քու մէջդ Իսրայէլին յանցանքները
14 գտնուեցան։ Անոր համար Մորե-
սեթգեթին ընծաներ պիտի տաս.
Աքզիբի տուները՝ Իսրայէլի
թագաւորներուն պիտի ստեն։
15 Տակաւին քեզի ժառանգ պիտի բե-
րեմ՝ ո՛վ Մարեսայի բնակիչ.
Իսրայէլի փառքը՝ մինչեւ Ոդողոմ
16 պիտի հասնի։ Քու սիրելի որ-
դւոցդ համար՝ մազերդ փետտէ՛,
ու կտրէ՛. կնտութիւնդ՝ արծիւի
պէս շատցուր, քանզի քեզմէ գե-
րութեան գացին։

## ԳԼ. Բ

1 Զրկողութեան դէմ վայ կը կարդայ. 4 Ողբ
մը։ 7 Անիրաւութեան ու կռապաշտութեան
դէմ յանդիմանութիւն մը։ 12 Յակոբին
գերեդարձութեանը խոստմունքը։

1 Վա՛յ անոնց՝ որ անօրէնութիւն
կը խորհին, ու իրենց անկողին-
ներուն վրայ չարութիւն կը հնարեն.

Ն. ք. գճ. իւր 730

անոնք առաւօտեան լոյսին ատենը
զանիկայ 'ի գործ կը դնեն , քանզի
գ իրենց ձեռքերուն մէջը ոյժ կայ .
2 Ու անոնք դ ագարակներու կը ցան-
կան , ու զանոնք կը յափշտակեն ,
և տուներու ու զանոնք կ'առնեն . և
մարդուն , ու իր տանը , մարդուն ,
ու իր ժառանգութեանը զրկանք
3 կ'ընեն ։ Անոր համար Տէրը այսպէս
կ'ըսէ . Ահա ես ե աս ազգին վրայով
չարիք մը կը խորհիմ , ուսկից պի-
տի չկրնաք ձեր պարանոցը հանել .
ու պիտի չկրնաք հպարտութեամբ
քալել . զվասն զի ժամանակը չար
4 է ։ Ան օրը ձեր վրայ է առակ պիտի
խօսին , ու տրտմալի ողբով ըպիտի
ողբան , ու ըսեն . Բոլորովին յա-
փըշտակուեցանք . իմ ժողովուր-
դիս բաժինը փոխեց . զանիկայ ինչ-
պէս ինծմէ վերցուց . մեր ագարակ-
ները՝ ետ տալու տեղը՝ բաժնեց ։
5 Անոր համար Տէրոջը ժողովքին մէջ՝
ը վիճակով լար քաշող մը պիտի
չունենաս ։
6 Մարգարէութիւն ընողներուն՝
ծ Մարգարէութիւն մի ընէք , կ'ը-
սեն . անոնց մարգարէութիւն պի-
տի չընեն , մանչէ նախատինքը՝ պիտի
7 չվերնայ ։ Ով Յակոբի տուն ը-
սուող՝ միթէ Տէրոջը ոգին կարճը-
ցաւ . անոր գործքերը ասո՞նք են .
միթէ ուղղութեամբ քալողին՝ իմ
8 խօսքերս աղէկ չե՞ն ։ Եւ իմ ժո-
ղովուրդս շատոնցմէ ոսոխ եղաւ՝
թշնամի ըլլալու համար . ապա-
հովութեամբ անցնողներէն՝ պատե-
րազմէ դարձողներէն՝ հանդերձնե-
րուն * հետ պատմուճանը կը կողոպ-
9 տէք ։ Իմ ժողովուրդիս կնիկնե-
րը՝ իրենց զուարճալի տուներէն կը
վռնտէք . անոնց տղաքներէն՝
յաւիտեան իմ փառքս կ'առնէք ։
10 Ելէք , ու գացէ՛ք . քանզի ասիկայ
է հանգստութեան տեղ չէ . Նէր
պիղծ ըլլալուն պատճառովը մեծ
կործանումով բնաջինջ պիտի ըլ-
11 լայ ։ Թէ որ մէկ մարդ մը է հովի և
ունայնութեան ետևէ երթայ , ու
ստութիւն խօսի՝ ըսելով . Գինիի
ու օղիի համար քեզի մարգարէու-
թիւն ընեմ .. անիկայ պիտի ըլլայ
աս ժողովուրդին մարգարէն ։
12 ծ Ով Յակոբ՝ ամէնքդ անշուշտ
պիտի ժողվեմ . Իսրայէլին մնացոր-
դը պիտի հաւաքեմ , ու ւ Բօսրայի
ոչխարներուն պէս՝ իրենց փարախին
մէջը եղող հօտերու պէս՝ մէկտեղ
պիտի դնեմ . ճ մարդոց բազմութեա-
նը համար աղմուկ պիտի ըլլայ ։
13 Խրամատութիւն ընողը անոնց առ-
ջևը ելաւ . անոնք խրամատեցին ,
ու դռնէն անցան , և անկէ ելան .
ու յ անոնց թագաւորը անոնց առ-

գ Ծն. լա. 29 .
դ Ես. ե. 8 .
ե Երեմ. ը. 3 .
զ Ամով ե. 13 . Եփե. ե. 16 .
է Ամի. բ. 6 .
ը Թագ. ա. 17 .
թ Օր. լբ. 8 . 9 .
ժ Ես. լ. 10 . Ամով. բ. 12 . է. 16 .
* կամ՝ վրա-յէն
ի Օբ. ժբ. 9 .
ւ Ղև. ժը. 25 . 28 . Երեմ. գ. 2 .
ի Եզեկ. ժգ. 3 .
ծ Գւ. դ. 6 . 7 .
կ Երեմ. լա. 10 .
ճ Եզեկ. լզ. 37 .
յ Ովս. գ. 5 .

ջևը անցաւ . ու Տէրը իբրև անոնց
գլուխ առջևէն կ'երթայ ։

ԳԼ. Գ

1 Իշխաններուն անգթութիւնը ։ 5 Մարգա-
րէներուն ստութիւնը ։ 9 Ասոնց ամենուն
ալ անհոգութիւնը ։

1 Ու ըսի . Հիմա մտիկ ըրէք , ով
Յակոբին գլխաւորները , ու Իս-
րայէլի տանը իշխանները . ա պէտք
չէ՞ որ դուք իրաւունքը ճանչնաք .
2 Դուք որ աղէկութիւնը կ'ատէք ,
ու չարութիւնը կը սիրէք . բ մար-
դոց վրայէն մորթերը , ու անոնց
3 ոսկորներէն միսերը կը հանէք . Ու
անոնք որ գ իմ ժողովուրդիս միսը
կ'ուտեն , և անոնց վրայէն մոր-
թերը կը հանեն , ու անոնց ոսկոր-
ները կը փշրեն , և զանոնք պտուկի
մէջ , ու դ կաթսայի մէջ եփելու
4 միսի պէս կտոր կտոր կ'ընեն , Ան
ատենը ե Տէրոջը պիտի աղաղա-
կեն , բայց անոնց պատասխան
պիտի չտայ , ու ան ժամանակը
իր երեսը անոնցմէ պիտի ծածկէ .
վասն զի անոնք չար գործքեր ը-
րին ։
5 Այսպէս կ'ըսէ Տէրը զան մար-
գարէներուն համար՝ որոնք իմ ժո-
ղովուրդս կը մոլորցընեն , ու է ի-
րենց ակռաներովը կը խածնեն , և
խաղաղութիւն կը քարոզեն , ու
ը ով որ անոնց բերանը բան չդներ ,
անոր դէմ պատերազմ կը հրատա-
6 րակեն ։ թ Անոր համար ձեզի գի-
շեր պիտի ըլլայ , որ տեսիլք չտես-
նէք . և ձեզի խաւար պիտի ըլլայ ,
որ գուշակութիւն չընէք . ժ Ու
մարգարէներուն վրայ արևը պիտի
մտնէ , և անոնց վրայ օրը պիտի
7 խաւարի . Ու տեսանողները պի-
տի ամչնան , և գուշակողները
ամօթով պիտի ըլլան . ամէնքն
ալ իրենց շրթունքը պիտի ծած-
կեն . ծ վասն զի Աստուծմէ պա-
8 տասխան մը պիտի չըլլայ ։ Սա-
կայն ես Տէրոջը Հոգւովը՝ զօրու-
թեամբ , դատաստանով , և ա-
րիութեամբ լեցուած եմ , լ որ
Յակոբին՝ իր յանցանքը , ու Իս-
րայէլին՝ իր մեղքը յայտնեմ ։
9 Հիմա ասիկայ մտիկ ըրէք , ով
Յակոբի տանը գլխաւորները , ու
Իսրայէլի տանը իշխանները , դուք
որ իրաւունքէն կը զզուիք , ու ա-
10 մէն ուղղութիւնը կը ծռէք , ւ Սիո-
նը՝ ե արիւններով , ու Երուսաղէ-
մը՝ անիրաւութեամբ կը շինէք ։
11 ծ Անոր գլխաւորները կաշառքով
կը դատեն , ու կ անոր քահանա-
ները վարձքով կը սորվեցընեն , և
անոր մարգարէները ստակով գու-
շակութիւն կ'ընեն , ճ ու Տէրոջը

Ն. ք. գճ. իւր 730
ա Ես. ծբ. 12 .
710
ա Երեմ. ե. 4 . 5 .
բ Եզր. Ա-նոնց
գ Սաղ. ժդ. 4 .
դ Եզեկ. ժա. 3 . 7 .
ե Սաղ. ժր. 41 . Առակ. ա. 28 . Ես. ա. 15 . Եզեկ. ը. 18 . Զաք. է. 13 .
զ Ես. ծզ. 10 . 11 . Եզեկ. ժգ. 10 . իբ. 25 .
է Գւ. բ. 11 . Մատ. է. 15 .
ը Եզեկ. ժգ. 18 . 19 .
թ Ես. ը. 20 . 22 . Եզեկ. ժգ. 23 . Զաք. ժգ. 4 .
ժ Ամով. ը. 9 .
ծ Սաղ. հդ. 9 . Ամով. ը. 11 .
լ Ես. ծը. 1 .
ւ Երեմ. իբ. 13 .
ի Եզեկ. իբ. 27 . Ամբ. ը. 12 . Սոփ. գ. 3 .
ծ Ես. ա. 23 . Եզեկ. իբ. 12 . Ովս. դ. 18 . Գւ. է. 3 .
կ Երեմ. զ. 13 .
ճ Ես. խը. 2 . Երեմ. է. 4 . Հռով. բ. 17 .

Ն. Ք. : Գ. Ք. 710

ց Երեմ. իզ. 18, Գլ. ա. 6.
ւ Սաղ. հթ. 1.
փ Գլ. դ. 2.

ա Ես. բ. 2, &c. Եզեկ. ժէ. 22, 23.
բ Ես. բ. 4, Տես Յովել. գ. 10.
գ Սաղ. հբ. 7.
դ Գ Թագ. դ. 25, Զաք. գ. 10.
ե Երեմ. բ. 11.
զ Զաք. ժ. 12.
է Եզեկ. լդ. 16, Սոփ. գ. 19.
ը Սաղ. ճխէ. 2, Եզեկ. լդ. 13, լէ. 21.
թ Գլ. բ. 12, ե. 3, 7, 8, է. 18.
ժ Ես. թ. 6, իդ. 23, Դան. է. 14, 27, Ղուկ. ա. 33, Յայտ. ժա. 15.
ի Երեմ. ը. 19.
լ Ես. ժգ. 8, իա. 3, Երեմ. լ. 6, ծ. 43.

վրայ կը կռթընին, ու կ'ըսեն.
Չէ՞ որ Տէրը մեր մէջն է. մեր վրայ
12 չարիք պիտի չգայ: Ուրեմն ձեր
պատճառաւը՝ Սիոնը [ց]ագարակի
պէս պիտի հերկուի, ու Երու-
սաղէմը աւերակներու դէզեր, ու
[փ]Տէրոջը տանը լեռը՝ անտառի
բարձր տեղերու պէս պիտի ըլլայ:

## ԳԼ. Դ

1 Եկեղեցիին փառքը. 3 խաղաղութիւնը, 8 թագաւորութիւնը, 11 ու յաղթութիւնը:

1 Բայց [ա]վերջի օրերը պիտի ըլլայ որ
Տէրոջը տանը լեռը՝ լեռներուն
գլխուն վրայ պիտի հաստատուի,
և բլուրներէն վեր պիտի բարձրա-
նայ, ու ժողովուրդները հեղեղի
2 պէս անոր պիտի դիմեն. Եւ շատ
ազգեր պիտի երթան՝ ու ըսեն.
Եկէք. Եհովային լեռը՝ Յակոբին
Աստուծոյն տունը ելլենք, որ մեզի
իր ճամբաները սորվեցընէ, ու ա-
նոր շաւիղներուն մէջը քալենք.
ինչու որ օրէնքը Սիոնէն՝ ու Տէրո-
ջը խօսքը՝ Երուսաղէմէն պիտի ել-
3 լէ. Եւ անիկայ շատ ժողովուրդնե-
րու մէջ դատաստան պիտի ընէ,
ու զօրաւոր ազգեր՝ մինչև հեռաւոր
տեղուանք պիտի յանդիմանէ. ու
[բ]անոնք իրենց սուրերը խոփեր՝ և
իրենց նիզակները յօտոցներ պիտի
շինեն. ազգ ազգի վրայ սուր պիտի
չվերցընէ, [գ]և ալ պատերազմ պիտի
4 չսորվին. [դ]Հապա ամէն մարդ իր
որթին տակը, ու իր թզենիին
տակը պիտի նստի, ու վախցընող
պիտի չըլլայ. ինչու որ զօրաց Տէ-
5 րոջը բերանը խօսեցաւ: Քանզի
[ե]բոլոր ժողովուրդներէն ամէն մէկը
իր աստուծոյն անունովը կը քալէ.
բայց [զ]մենք յաւիտեանս յաւիտե-
նից մեր Տէր Աստուծոյն անունովը
պիտի քալենք:
6 Ան օրը՝ կ'ըսէ Տէրը, [է]կաղը պի-
տի ժողվեմ, [ը]ու աքսորուածը պի-
տի հաւաքեմ, և զանիկայ ալ որ
7 նեղեցի. Եւ կաղը՝ [թ]մնացորդ պիտի
ընեմ, ու հեռուն վռնտուածը՝
զօրաւոր ազգ. և Տէրը Սիոն լեռա-
նը մէջ՝ [ժ]անոնց վրայ պիտի թա-
գաւորէ, հիմակուընէ մինչև յա-
8 ւիտեան: Ու դուն՝ ով հօտի աշ-
տարակ, Սիոնի աղջկանը բլուրը,
մինչև քեզի պիտի գայ, [illegible] պի-
տի հասնի առջի իշխանութիւնը,
ու թագաւորութիւնը՝ Երուսաղէ-
մի աղջկանը:
9 Հիմա ինչո՞ւ բարձրաձայն կը պո-
ռաս. [ի]միթէ քու մէջդ թագաւոր
չկա՞յ, կամ թէ քու խորհրդականդ
կորսուեցա՞ւ, որ քեզ՝ [լ]ծննդականի
10 կնոջ պէս ցաւ բռնեց: Ցաւ քաշէ,
ու ծննդականի պէս երկանց մէջ
եղիր, ով Սիոնի աղջիկը. քանզի
հիմա քաղաքէն պիտի ելլես, ու
դաշտի մէջ պիտի բնակիս, ու մին-
չև Բաբելոն պիտի երթաս, և հոն
պիտի ազատիս. հոն Տէրը պիտի
ազատէ քեզ՝ քու թշնամիներուդ
11 ձեռքէն: [խ]Ու հիմա քու վրադ
շատ ազգեր ժողվուեցան, որոնք
կ'ըսեն. Թող անիկայ պղծուի՝, ու
12 մեր աչքերը [ծ]Սիոնը տեսնեն: Բայց
անոնք [կ]Տէրոջը խորհուրդները չեն
գիտեր, ու անոր դիտաւորութիւ-
նը չեն հասկընար. քանզի ինքը զա-
նոնք կը ժողվէ, [հ]ինչպէս որաները
13 կալին մէջ կը ժողվուին: [ձ]Ելիր,
ու կալը ծեծէ՝, ով Սիոնի աղջիկը.
քանզի քու եղջիւրդ երկաթէ պի-
տի ընեմ, և քու կճղակներդ պղըն-
ձէ պիտի ընեմ, ու [ղ]շատ ժողո-
վուրդներ պիտի մանրես. [ճ]ու ա-
նոնց վաստակը Եհովային, և անոնց
ստացուածքը՝ [մ]բոլոր երկրին Տէրո-
ջը պիտի նուիրեմ:

## ԳԼ. Ե

1 Քրիստոսի ծնունդը. 4 անոր թագաւորութիւնը. 8 անոր յաղթութիւնը:

1 Հիմա ով գունդի աղջիկ՝ քեզի
գունդ կազմէ. մեր վրայ պա-
շարում դրուեցաւ. [ա]Իսրայէլի
դատաւորին ծնօտին գաւազանով
2 զարկին: Եւ դուն՝ ով [բ]Բեթլէ-
հէմ Եփրաթա, թէև Յուդայի
[գ]հազարաւորներուն մէջը ըլլալու
պզտիկ ես, բայց քեզմէ պիտի ելլէ
ինծի ան որ Իսրայէլի վրայ [դ]իշխան
պիտի ըլլայ. [ե]ու անոր ելքը 'ի հը-
նուց՝ յաւիտենական օրերէն է:
3 Անոր համար զանոնք [illegible] պիտի
տայ, մինչև [զ]ծնանողին ծնանելու
ժամանակը. և [է]անոր եղբայրնե-
րուն մնացորդը՝ Իսրայէլի որդւոցը
4 պիտի դառնայ: Ու անիկայ պի-
տի կենայ, ու Տէրոջը զօրութեամ-
բը՝ և իր Տէր Աստուծոյն անուանը
մեծվայելչութեամբը [ը]պիտի հո-
վուէ. ու անոնք պիտի բնակին.
քանզի հիմա [թ]մինչև երկրին ծայրե-
5 րը պիտի մեծնայ: Եւ անիկայ
[ժ]խաղաղութիւն պիտի ըլլայ. երբ-
որ Ասորեստանցին մեր երկիրը մըտ-
նէ, ու մեր պալատներուն մէջը ոտք
կոխէ, անոր դէմ եօթը հովիւ, և
ութը իշխանաւոր մարդիկ պիտի
6 հանենք: Ու անոնք Ասորեստանի
երկիրը սրով ու [ի]Նեբրովթի երկի-
րը՝ իր դռներուն մէջը պիտի սպա-
ռեն. և անիկայ [լ]մեզ պիտի ազա-
տէ Ասորեստանցիներէն, երբոր ա-
նոնք մեր երկիրը մտնեն, ու մեր
սահմաններուն մէջը ոտք կոխեն:

Ն. Ք. Գ. Ք. 710

խ Ողբ. բ. 16.
ծ Աբդ. 12, Գլ. է. 10.
կ Ես. ծե. 8, Հռով. ժա. 33.
հ Ես. իա. 10.
ձ Ես. խա. 15, 16, Երեմ. ծա. 33.
ղ Դան. բ. 44.
ճ Ես. ժը. 7, իգ. 18, կ. 6, 9.
մ Զաք. դ. 14, զ. 5.

ա Ողբ. գ. 30, Մատ. ե. 39, իէ. 30.
բ Մատ. բ. 6, Յովհ. է. 42.
գ Ել. ժը. 25, ա Թագ. իգ. 23.
դ Ծն. խթ. 10, Ես. թ. 6.
ե Սաղ. ղ. 2, Առակ. ը. 22, 23, Յովհ. ա. 1.
զ Գլ. դ. 10.
է Գլ. դ. 7.
ը Ես. խ. 11, խթ. 10, Եզեկ. լդ. 23, Գլ. է. 14.
թ Սաղ. հբ. 8, Ես. ծբ. 13, Զաք. թ. 10, Ղուկ. ա. 32.
ժ Սաղ. հբ. 7, Ես. թ. 6, Զաք. թ. 10, Ղուկ. բ. 14, Եփես. բ. 14.
ի Ծն. ժ. 8, 10, 11.
լ Ղուկ. ա. 71.

Ն. Ք. ԴՔ. 710

7 Ու Յակոբին մնացորդը շատ
ժողովրդոց մէջ՝ ցօղի պէս պիտի
ըլլայ որ Տէրոջմէ կու գայ, ու շա-
ղի պէս՝ որ կանանչ խոտի վրայ
կ՚իջնէ. որ անիկայ մարդէ չսպա-
սեր, ու մարդու որդիներէն չյու-
8 սար։ Եւ Յակոբին մնացորդը ազ-
գաց մէջ, շատ ժողովրդոց մէջ՝
[illegible] պիտի ըլլայ, ինչպէս առիւծ
մը անտառի գազաններուն մէջը,
կամ առոյգ առիւծ մը՝ ոչխարաց
հօտերուն մէջը. որ եթէ անցնի,
կը կոխկռտէ, ու կը պատառէ, և
9 ազատող մը չըլլար։ Քու ձեռքդ՝
քու հակառակորդներուդ վրայ
պիտի վերնայ. ու բոլոր թշնամի-
ներդ պիտի կոտրին։
10 Եւ պիտի ըլլայ որ այն օրը՝ կ՚ըսէ
Տէրը, քու ձիերդ քու մէջէդ բնա-
ջինջ պիտի ընեմ, և քու կառ-
11 քերդ պիտի կորսնցընեմ. Եւ քու
երկրիդ քաղաքները բնաջինջ պի-
տի ընեմ, ու բոլոր պարիսպներդ
12 պիտի փլցընեմ, Եւ քու ձեռքէդ
կախարդութիւնները բնաջինջ պի-
տի ընեմ. ու ալ գուշակութիւն
13 ընողներ պիտի չունենաս. Եւ քու
մէջէդ քու դրօշեալներդ, ու ար-
ձաններդ բնաջինջ պիտի ընեմ. ու
ա՛լ ասկէ յետոյ քու ձեռացդ գործքե-
րուն երկրպագութիւն պիտի չը-
14 նես։ Եւ քու մէջէդ Աստարովթի
կուռքերդ պիտի կործանեմ, ու
քու քաղաքներդ պիտի աւրեմ։
15 Եւ ինծի մտիկ չընող ազգերէն՝
սրտմտութեամբ ու բարկու-
թեամբ վրէժ պիտի առնեմ։

ԳԼ. Զ

1 Աստուած կը վիճի իր ժողովուրդին հետ՝ անոր ապերախտութեանը, 6 ագիտութեանը, 10 անօրէնութեանը, 16 ու կռապաշտութեանը համար։

1 Հիմա Տէրոջը ըսածը մտիկ ըրէք։
Ելիր, ու լեռներուն առջևը
դատ վարէ, և բլուրները քու ձայ-
2 նըդ թող լսեն։ Ով լեռներ,
ու երկրին ամուր հիմերը՝ Տէրոջը
դատը մտիկ ըրէք. քանզի Տէրը
իր ժողովուրդին հետ դատ ունի,
ու Իսրայէլին հետ պիտի վիճի։
3 Ով իմ ժողովուրդս՝ քեզի ի՞նչ
ըրի, ու ի՞նչ բանով քեզ յոգնե-
ցուցի. ինծի դէմ պատասխան
4 տուր։ Վասն զի քեզ Եգիպտո-
սի երկրէն հանեցի, ու ծառայու-
թեան տունէն քեզ փրկեցի, և
քու առջևդ Մովսէսը, Ահարոնը
5 ու Մարիամը խրկեցի։ Ո՛վ իմ
ժողովուրդս՝ մի՛տքդ բեր ինչ որ
Մովաբացւոց Բաղակ թագաւորը
խորհեցաւ, ու ինչ որ Բէովրեան
Բաղաամը անոր պատասխանեց, և
ինչ որ եղաւ Սատիմէն մինչև Գաղ-
գաղա. որպէս զի Տէրոջը արդա-
րութիւնը գիտնաս։
6 Տէրոջը առջևը ինչո՞վ երթամ,
ու Բարձրեալ Աստուծոյն առջևը
իյնամ. արդեօք անոր առջևը ող-
ջակէզներո՞վ, մէկ տարեկան որ-
7 թերո՞վ երթամ։ Արդեօք Տէրը
հազարաւոր խոյերու, կամ բիւրա-
ւոր ձէթի գետերու պիտի հաճի՞.
արդեօք իմ յանցանքիս համար՝
իմ անդրանիկս, ու հոգւոյս մեղ-
քին համար՝ որովայնիս պտուղը
տամ։
8 Քեզի յայտնեց՝ ո՛վ մարդ, թէ
ինչ է աղէկը. ու Տէրը քեզմէ
ի՞նչ կը պահանջէ, բայց միայն
իրաւունք ընել, ողորմութիւն
սիրել, ու խոնարհութեամբ քու
Աստուծոյդ հետը քալել։
9 Տէրոջը ձայնը քաղաքին կը կան-
չէ. ու իմաստունը քու անունդ
պիտի տեսնէ. գաւազանը, ու ա-
10 նոր հրամայողը լսեցէք։ Անօրէնին
տանը մէջ տակաւին անօրէնու-
թեան գանձեր կա՞ն, ու պակաս
11 արդուն որ պիղծ է։ Միթէ անօ-
րէնութեան կշիռներ, ու խար-
դախ քարերու քսակ ունեցողը մա-
12 քուր պիտի սեպե՞մ։ Քանզի անոր
հարուստները զրկանքով լեցուն
են, և անոր բնակիչները սուտ կը
խօսին, ու իրենց բերնին մէջ նեն-
13 գաւոր լեզու ունին։ Ուստի ես
ալ քեզ զարնելով հիւանդ պիտի
ընեմ, և քու մեղքերուդ համար
14 տեղ աւերակ պիտի ընեմ։ Դուն
պիտի ուտես, ու պիտի չկշտանաս.
և քու անօթութիւնդ փորիդ մէջը
պիտի ըլլայ. պիտի յափշտակես,
բայց պիտի չկարենաս ազատել,
ու ազատածդ սուրի պիտի մատ-
15 նեմ։ Դուն պիտի սերմանես,
բայց պիտի չհնձես. դուն ձիթա-
պտուղ պիտի կոխես, բայց եղով
պիտի չօծուիս. քաղցու [illegible]
[illegible], բայց գինի պիտի չը-
16 խմես։ Քանզի Ամրիին հրաման-
ները կը պահուին, և Աքաաբին
տանը բոլոր գործքերը. և դուք ա-
նոնց խորհուրդներովը կը քալէք.
որպէս զի քեզ նամայի ընեմ, և
քու բնակիչներդ սուլելու բան
ըլլայ. ուստի իմ ժողովուրդիս
նախատինքը պիտի կրէք։

ԳԼ. Է

1 Եկեղեցին իր քիչութեանը, 3 և ընդհանուր ապականութեանը համար գանգատ ընելով. 5 իր յոյսը Աստուծոյ վրայ կը դնէ՝ և չէ թէ մարդու վրայ. 8 իր թշնամիներուն վրայ յաղթական կը հանդիսանայ։ 14 Աստուած զանիկայ կը քաջալերէ բարի խոստ-

Ն. Ք. ԴՔ. 710

Ն․ Ք․ ՂՖ․
710

ա Եսա․ ԺԷ․ 6։ ԻԴ․ 13։
բ Եսա․ ԻԲ․ 4։ Ովս․ Թ․ 10։
գ Սաղ․ ԺԲ․ 1։ ԺԴ․ 1, 3։ Եսա․ ԾԷ․ 1։
դ Ամբ․ Ա․ 15։
ե Ովս․ Դ․ 18։
զ Եսա․ Ա․ 23։ Գւ․ Գ․ 11։
է Բթագ․ ԻԳ․ 6, 7։ Եզեկ․ Բ․ 6։ Տես Եսա․ ԾԵ․ 13։
ը Երեմ․ Թ․ 4։
թ Եզեկ․ ԻԲ․ 7։ Մատ․ Ժ․ 21, 35, 36։ Ղու․ ԺԲ․ 53։ ԻԱ․ 16։ Բ Տիմ․ Գ․ 2, 3։
ժ Եսա․ Ը․ 17։
ի Առակ․ ԻԴ․ 17։ Տես Ողբ․ Դ․ 21։
լ Սաղ․ ԼԷ․ 24։ Առակ․ ԻԴ․ 16։
խ Սաղ․ ԻԷ․ 1։
ծ Ողբ․ Գ․ 39։
կ Սաղ․ ԼԷ․ 6։
հ Սաղ․ ԼԲ․ 26։
ձ Սաղ․ ԽԲ․ 3, 10։ ՀԹ․ 10։ ՃԺԵ․ 2։ Յովէլ․ Բ․ 17։
ղ Գւ․ Դ․ 11։

մանկութենէդ ։ 16 Թշնամեաց խոնարհութեան․ 18 և իր ողորմութիւնովը ։

1 Վա՜յ ինծի՛ որ ամառնային պտուղը
քաղուածի պէս , այգեկութէն
ետքը ողկոյզ չկայ ․ ու-
տելու ողկոյզ չկայ ․ բ հոգիս կան-
խահաս պտուղներուն կը ցանկայ ։
2 գ Բարեպաշտը երկրէս կորսուեցաւ ,
ու մարդոց մէջ ուղիղ մէկը չկայ ․
ամէնքը արիւններու համար դարան
կը գործեն ․ դ ամէն մարդ իր եղ-
3 բայրը որոգայթով կ'որսայ ։ Ձեռ-
քերով շատ չարութիւն ընելու
համար՝ ե իշխանը ընծայ կը պա-
հանջէ , ու դատաւորը կաշառքի
կը նայի , ու մեծ մարդը իր սրտին
ցանկութեանը համեմատ կը խօսի ․
4 այսպէս զանիկայ կը ծռեն ։ Անոնց
աղէկը՝ զ փուշի պէս , շիտակը՝ փշե-
ղէն ցանգէն գէշ է ․ քու դէտե-
րուդ օրը՝ քու այցելութիւնդ ե-
կաւ ․ անոնց շփոթութիւնը հիմա
5 պիտի ըլլայ ։ է Բարեկամի մի՛ հա-
ւատաք ․ մտերիմ բարեկամի մի՛
ապաւինիք․ ծոցդ պառկողէն՝ բեր-
6 նիդ դռները պահէ՛ ։ Քանզի ը որ-
դին իր հայրը կ'անարգէ ․ աղջիկը
իր մօրը վրայ , թ հարսը իր կե-
սուրին վրայ կ'ելլէ ․ մարդուն թըշ-
նամիները իր ընտանիքն են ։
7 Բայց ժ ես Տէրոջը պիտի սպասեմ․
իմ փրկութեանս Աստուծոյն պիտի
յուսամ․ իմ Աստուածս ինծի պի-
8 տի լսէ ։ Ո՛վ իմ թշնամիս՝ ի վրաս
մի՛ խնդար ․ լ թէև իյնամ, պիտի
ելլեմ ․ թէև խաւարի մէջ նըս-
տիմ, խ Տէրը ինծի լոյս պիտի ըլ-
9 լայ ։ ծ Տէրոջը բարկութիւնը պի-
տի կրեմ, ( քանզի անոր դէմ մեղք
գործեցի ,) մինչև որ անիկայ իմ
դատս պաշտպանէ , ու ինծի իրա-
ւունք ընէ , կ զիս լոյսը հանէ , ու
10 անոր արդարութիւնը տեսնեմ ։ Ան
ատենը իմ թշնամիս պիտի տեսնէ․
համօթը պիտի ծածկէ զանիկայ ,
որ ինծի կ'ըսէր թէ՝ ձ Ո՞ւր է քու
Տէր Աստուածդ ․ ղ իմ աչքերս
զանիկայ պիտի տեսնեն ․ հիմա ա-
նիկայ մ փողոցներուն ցեխին պէս
ոտից կոխան պիտի ըլլայ ։
11 Ան օրը որ քու յ պարիսպներդ
պիտի շինուին , նոյն օրը պատուէ-
12 րը հեռացած պիտի ըլլայ ։ Ան օրը
ն Ասորեստանէն , և * պարսպաւոր
քաղաքներէն, ու † պարիսպէն մինչև
գետը , և ծովէ ծով , ու լեռնէ
13 լեռ քեզի պիտի գան ։ Սակայն
երկիրը ամայի պիտի ըլլայ իր բնա-
կիչներուն ‡ պատճառաւը , շ իրենց
գործքերուն պտուղէն ոտքէն ։
14 Քու գաւազանովդ ո հովուէ՛ քու
ժողովուրդդ , քու ժառանգու-
թեանդ խաշինքը՝ որ առանձին կը
նստի չ ի մէջ անտառ մը Կարմեղոսի
մէջ ․ անոնք առջի օրերուն պէս
Բասանի , ու Գաղաադի մէ՛ջ թող
15 արածին ։ Անոր հրաշքներ պիտի
ցուցընեմ , պ ինչպէս ան օրերը՝ որ
16 Եգիպտոսի երկրէն ելար ։ Ազգերը
ջ պիտի տեսնեն , ու իրենց բոլոր
քաջութենէն պիտի ամչնան ․ Ըբեր-
նի վրայ ձեռք պիտի դնեն ․ ռ ա-
նոնց ականջները պիտի խլանայ ։
17 Օձի պէս ս հող պիտի լզեն ․ երկրի
սողուններուն պէս վ իրենց պա-
հուըտած տեղերէն պիտի դողան ․
տ մեր Տէր Աստուծմէն պիտի զար-
հուրին , ու քեզմէ պիտի վախնան ։
18 ր Քեզի պէս Աստուած ո՞վ կայ ,
որ ց անօրէնութիւնը կը ներէ , ու
իր ժառանգութեանը ւ մնացորդին
յանցանքը անտես կ'ընէ ․ փ իր բար-
կութիւնը յաւիտեան չպահեր ․
քանզի ողորմութիւնը կը սիրէ ։
19 Անիկայ պիտի դառնայ , մեզի ո-
ղորմութիւն պիտի ընէ ․ մեր ան-
օրէնութիւնները ոտքին տակը պի-
տի առնէ ․ այո՛ անոնց բոլոր մեղ-
քերը ծովուն խորութեանը մէջ
20 պիտի նետես ։ ք Յակոբին ճշմար-
տութիւն պիտի ընես , և Աբրահա-
մին ողորմութիւն , ինչպէս որ առ-
ջի օրերէն 'ի վեր օ մեր հայրերուն
երդումով խոստացար ։

Ն․ Ք․ ՂՖ․
710

մ Բթագ․ ԻԲ․ 43։ Զաք․ Ժ․ 5։
յ Ամով․ Թ․ 11, ՃԱ։
ն Եսա․ ԺԱ․ 16։ ԺԹ․ 23, ՃԱ։ ԻԷ․ 13։ Ովս․ ԺԱ․ 11։
* Կամ՝ Եգիպտոսի
† Կամ՝ Եգիպտոսէն
‡ Կամ՝ հետ,
շ Երեմ․ ԻԱ․ 14։ Գւ․ Գ․ 12։
ո Սաղ․ ԻԸ․ 9։ Գւ․ Ե․ 4։
չ Եսա․ ԼԷ․ 24։
պ Սաղ․ ԿԸ․ 22։ ՀԸ․ 12։
ջ Եսա․ ԻԶ․ 11։
ռ Յոբ․ ԻԱ․ 5։ ԻԹ․ 9։
ս Սաղ․ ՀԲ․ 9։ Եսա․ ԽԹ․ 23։
վ Սաղ․ ԺԸ․ 45։
տ Երեմ․ ԼԳ․ 9։
ր Ելք․ ԺԵ․ 11։
ց Ելք․ ԼԴ․ 6, 7։ Երեմ․ Ծ․ 20։
ւ Գւ․ Դ․ 7։ Ե․ 3, 7, 8։
փ Սաղ․ ՃԴ․ 9։ Եսա․ ԾԷ․ 16։ Երեմ․ Գ․ 5։
ք Ղու․ Ա․ 72, 73։
օ Սաղ․ ՃԵ․ 9, 10։

# ՄԱՐԳԱՐԷՈՒԹԻՒՆ ՆԱՒՈՒՄԱՅ

Ն. Ք. ԴՔ. իրր 713

## ԳԼՈՒԽ Ա

1-15 Աստուծոյ վրէժխնդրութիւնը կը յայտնուի, իր ժողովուրդին բարութիւն՝ և իր թշնամիներուն խստութիւն ցուցընելովը ։

1 ա Նինուէի պատգամը. Եղկեսացի
Նաւումին տեսիլքին գիրքը ։
2 Եհովան բ Նախանձոտ ու գ վրէժ-
խնդիր Աստուած է. Եհովան
վրէժ առնող ու բարկութեան տէր
է. Եհովան իր հակառակորդներէն
վրէժ կ՚առնէ, ու իր թշնամիներուն
3 բարկութիւն կը պահէ ։ դ Եհովան
դ երկայնամիտ է, ու ե անոր զօրու-
թիւնը մեծ է. բայց յանցաւորը ա-
մենևին անպարտ չթողուր ։ Ե-
հովային ճամբան մրրիկի ու փո-
թորիկի մէջ է. ու ամպերը անոր
4 ոտքերուն փոշին են ։ է Ծովուն կը
սաստէ, ու զանիկայ կը ցամքեցը-
նէ, և բոլոր գետերը կը չորցընէ.
ը Բասանը ու Կարմեղոսը կը թա-
ռամի, և Լիբանանին ծաղիկը կը
5 թառամի ։ թ Լեռները անկէ կը դո-
ղան, ու ժ բլուրները կը հալին.
ի երկիրը անոր երեսէն կը խախտի,
աշխարհքը ու անոր բոլոր բնակիչ-
6 ները ։ Անոր ցասմանը առջևը ո՞վ
կրնայ կայնիլ, և անոր սաստիկ բար-
կութեանը լ ո՞վ կրնայ դէմ դնել.
խ անոր սրտմտութիւնը կրակի պէս
կը թափի, ու ապառաժները անկէ
կը խորտակին ։
7 ծ Եհովան բարի է. նեղութեան
օրը ամրութիւն է. ու կ իրեն ապա-
8 ւինողները կը ճանչնայ ։ Բայց ան
քաղաքին տեղը հ յորդահոս հեղեղով
բոլորովին պիտի աւրէ. և խաւարը
պիտի հալածէ անոր թշնամիները ։
9 ձ Եհովային դէմ ի՞նչ կը խորհիք.
ղ բնաջինջ ընողը անիկայ է. նեղու-
թիւնը երկրորդ անգամ պիտի չել-
10 լէ ։ Քանզի քանի որ անոնք ճ փու-
շերու պէս փաթթուած են, մ ու
իրենց ըմպելիքովը գինովցածի պէս
են, յ բոլորովին չորցած յարդի պէս
11 պիտի այրին ։ ն Քեզմէ Եհովային
դէմ չարութիւն մտածող մը՝ ան-
12 օրէն խորհրդական մը ելաւ ։ Տէ-
րը այսպէս կ՚ըսէ. Թէև անոնք
խաղաղութեան մէջ են, ու բազ-
մաթիւ են. սակայն շ անոնք պիտի
կտրին, երբոր ո անիկայ անցնի.
թէև քեզ նեղեցի, ալ պիտի չը-
13 նեղեմ ։ Եւ հիմա քու վրայէդ չ ա-
նոր լուծը պիտի կոտրեմ, ու քու
14 կապերդ պիտի կտրեմ ։ Եւ Տէրը
քեզի համար հրամայեց, որ մէյմըն
ալ քու անունէդ մարդ չսերմանուի.
քու աստուածներուդ տու-
նէն քանդակած և ձուլածոյ կուռ-
քերը բնաջինջ պիտի ընեմ. պ Զա-
նոնք քու գերեզմանդ պիտի ընեմ.
15 քանզի դուն անարգ եղար ։ Ահա
ջ լեռներուն վրայ աւետիս բերողին՝
խաղաղութիւն քարոզողին ոտքե-
րը. տօներդ պահէ՝ ո՛վ Յուդա,
ուխտերդ կատարէ. քանզի մէյմըն
ալ քու մէջէդ ռ անօրէն պիտի
չանցնի. անիկայ բոլորովին կոտ-
րեցաւ ։

## ԳԼ. Բ

1-13 Աստուծոյ ահաւոր և յաղթական զօրքը Նինուէի վրայ կու գան ։

1 ա Սորտակողը քու երեսիդ դէմ ե-
լաւ. բ պարիսպը պահպանէ՛,
ճամբան դիտէ՛. մէջքերը ուժով-
ցուր, ու բոլոր ոյժդ լաւ ժողվէ ։
2 Քանզի Տէրը Յակոբին վայելչու-
թիւնը՝ Իսրայէլին վայելչութեանը
պէս նորոգեց. վասն զի գ պարպող-
ները զանոնք պարպեցին, ու անոնց
3 որթի ուռերը աւրեցին ։ Անոր զօ-
րաւորներուն վահանը դ կարմրե-
ցաւ. անոր քաջ մարդիկները կար-
միրով ներկուեցան. պատրաստու-
թեան օրը՝ կառքը * երկաթի փայ-
լունութիւն՚՚ պիտի ունենայ, ու
նիզակները պիտի երերցուին ։
4 Կառքերը փողոցներուն մէջը պիտի
կատղին. հրապարակներուն մէջը
իրար պիտի բաղխեն. անոնց երևոյ-
թը ջահերու պէս պիտի ըլլայ, ու
փայլակներու պէս պիտի վազեն ։
5 Իր կտրիճները պիտի յիշէ. ա-
նոնք քալած ատեննին պիտի գլո-
րին. անոր բնակիչները պարսպին մօ-
տենալու պիտի արտորան, ու
պատսպարան պիտի պատրաստուի ։
6 Գետերուն դռները պիտի բացուին,
7 և պալատը պիտի † փլչի ։ Ու ‡ Նա-
խասահմանուեցաւ, որ՚՚ անիկայ
գերութեան պիտի ելլէ. և անոր
աղախինները կուրծքերնուն զար-

Ն. Ք. ԴՔ. իրր 713

ա Սոփ. բ. 13 ։
բ Ել. ի. 5 ։ Լդ. 14 ։ բ Օր. դ. 24 ։ Յես. իդ. 19 ։
գ բ Օր. լբ. 35 ։ Սաղ. ղդ. 1 ։ Եսթ. 18 ։
դ Ել. լդ. 6. 7 ։ Նէեմ. թ. 17 ։ Սաղ. ճդ. 8 ։ Յովն. դ. 2 ։
ե Յոբ. թ. 4 ։
զ Սաղ. ժը. 7 ։ Ռ. ։ ղէ. 2 ։ Ամբ. գ. 5. 11. 12 ։
է Սաղ. ճզ. 9 ։ Ես. ծ. 2 ։ Մատ. ը. 26 ։
ը Ես. լգ. 9 ։
թ Սաղ. կը. 8 ։
ժ Դատ. ե. 5 ։ Սաղ. ղէ. 5 ։ Միք. ա. 4 ։
ի բ Պետ. գ. 10 ։
լ Մաղ. գ. 2 ։
խ Յայտ. ժզ. 1 ։
ծ ա Մն. ժզ. 34 ։ Սաղ. ճ. 5 ։ Երեմ. լգ. 11 ։ Ողբ. դ. 25 ։
կ Սաղ. ա. 6 ։ բ Տիմ. բ. 19 ։
հ Դան. թ. 26 ։ ժա. 10, 22, 40 ։
ձ Սաղ. բ. 1 ։
ղ ա Թագ. գ. 12 ։
ճ բ Թագ. իգ. 6, 7 ։
մ Գլ. գ. 11 ։
յ Մաղ. դ. 1 ։
ն դ Թագ. ժթ. 22, 23 ։
շ դ Թագ. ժթ. 35, 37 ։
ո Ես. ը. 8 ։ Դան. ժա. 10 ։

չ Երեմ. բ. 20 ։ Լ. Տ ։
պ դ Թագ. ժթ. 37 ։
ջ Ես. ծբ. 7 ։ Հռով. ժ. 15 ։
ռ Հմր 11, 12 ։

ա Երեմ. ծ. 23 ։
բ Երեմ. ծա. 11, 12 ։ Գլ. գ. 14 ։
գ Սաղ. Ձ. 12 ։
դ Ես. կգ. 2, 3 ։
* Կամ՝ ջահերու լոյս
† Եբր. հալի ։
‡ Կամ՝ Թէև պահապաններ դրուած են

Ն. Ք. գՔ. Իրր 713

ա Եսա. ԼԸ. 14։ ԾԹ. 11։

նելով, ու աղաւնիի պէս մնչելով.
8 անոր հետը պիտի երթան ։ Ու
Նինուէն շատ ժամանակէ 'ի վեր
ջուրերու աւազանի պէս էր. սա-
կայն անոնք փախչելով՝ կայնեցէ՛ք,
կայնեցէ՛ք՝ ըսելով ըսէն. բայց դար-
9 ձող պիտի չըլլայ ։ Արծաթ յափշտ-
տակեցէք, ոսկի՛ յափշտակեցէք.
քանզի անոր զարդերը անթիւ են,
ու ամէն ցանկալի սպասներու առա-
10 տութիւն կայ ։ Պարապ ու պար-
պած ու գատարկացած է. և սիր-
տերը կը հալին, ու ծունկերը
իրարու կը զարնեն, և ամէն մէջ-
քերը կը դողան, ու ամենուն ե-
րեսները գոյներնին կը նետեն ։
11 Ո՞ւր է առիւծներուն բնակա-
րանը, և առոյգ առիւծներուն ա-
րօտը, որ արու առիւծը, մատակ
առիւծը, ու առիւծի կորիւնը հոն
կը պտըտէին, ու զանոնք վախցընող
12 մը չկար ։ Առիւծը իր կորիւննե-
րուն բաւական եղածին չափ կը
պատառէր, ու իր մատակ առիւծ-
ներուն համար կը խեղդէր, և իր
մորիները՝ որսով, ու իր բնակա-
րանները՝ յափշտակութեամբ կը
13 լեցնէր ։ Ահա ես քեզի դէմ եմ,
կ'ըսէ զօրաց Տէրը, և անոր կառ-
քերը պիտի այրեմ, ու ծուխի պէս
պիտի ընեմ. և քու առոյգ առիւծ-
ներդ սուրը պիտի ուտէ, ու քու
որսդ երկրին վրայէն պիտի ջնջեմ,
և քու դեսպաններուդ ձայնը մէյ-
մըն ալ պիտի չլսուի ։

## ԳԼ. Գ

1—19 Նինուէին ցաւալի կործանումը ։

1 Վա՜յ արիւններու քաղաքին. բո-
լորովին ստութեամբ ու յա-
փշտակութեամբ լեցուն է. հոն
2 որսը պակաս չէ ։ Ահա խարազանին
ձայնը, ու անիւին շարժման ձայ-
նը, և սրընթաց ձիին, ու ցնցուող
3 կառքին ձայնը ։ Ձիաւորը կը
վերցընէ *փայլուն սուրը, ու շող-
շողուն նիզակը, և շատ վիրաւոր-
ներ ու խիստ շատ մեռելներ կ'ըլ-
լան, ու դիերը անթիւ են, դիե-
4 րուն վրայ կը գլորին, Ան պոռնի-
կին պոռնկութեանցը շատութեա-
նը համար, որ խիստ շնորհալի ու
կախարդութեանց տէր ըլլալով, իր
պոռնկութիւններովը ազգեր, և իր
կախարդութիւններովը ազգա-
5 տոհմներ կը ծախէր ։ Ահա ես քե-
զի դէմ եմ, կ'ըսէ զօրաց Տէրը. ու
քու երեսիդ դէմ քու քղանցքդ
պիտի բանամ. և քու մերկու-
թիւնդ ազգերուն՝ ու քու անար-
գանքդ թագաւորութիւններուն
6 պիտի ցուցընեմ. Ու քու վրադ
պղծութիւններ պիտի նետեմ, ու

քեզ խայտառակ պիտի ընեմ, ու
7 քեզ օրինակ պիտի դնեմ ։ Ու պի-
տի ըլլայ որ՝ ամէն քեզ տեսնողը
քեզմէ պիտի փախչի, ու պիտի
ըսէ. Նինուէն աւերակ եղաւ. ո՞վ
անոր վրայ ո՞վ պիտի ողբայ. քեզի
ուսկից մխիթարիչներ փնտռեմ ։
8 Միթէ դուն Նովէն աղէկ ես, որ գետերուն մէջը կը բը-
նակէր, ու ջուրերով շրջապատած
էր, որ ծովը անոր խրամ եղած էր,
9 ու ծովը անոր պարիսպն էր. Անոր
զօրութիւնը Եթէովպիան ու Ե-
գիպտոսն էր, ու ծայր չունէր.
Փուդացիք ու Լիբէացիք քեզի օգ-
10 նական էին ։ Անիկայ ալ աքսոր ու
գերութեան գնաց. անոր տղաք-
ները անգամ ամէն ճամբու գլուխ
գետինը զարնուեցան. և անոր պա-
տուականներուն վրայ վիճակ ձգե-
ցին. ու անոր բոլոր մեծամեծները
11 շղթաներով կապուեցան ։ Դուն
ալ պիտի գինովնաս, ու անյայտ
ըլլաս. դուն ալ թշնամիէն ամրա-
12 նալու տեղ պիտի փնտռես ։ Քու
բոլոր բերդերդ կանխահաս պտուղ-
ներ ունեցող թզենիներու պէս պի-
տի ըլլան, որոնք երբոր թօթվուին,
13 ուտողին բերանը կ'իյնան ։ Ահա
քու ժողովուրդդ՝ քու մէջդ կնիկ-
ներու պէս պիտի ըլլան. քու երկրիդ
դռները անշուշտ քու թշնամինե-
րուդ պիտի բացուին. կրակը պի-
14 տի ուտէ քու նիգերդ ։ Պաշար-
ման համար քեզի ջուրե՛ր քաշէ.
բերդերդ ամրացո՛ւր. ցեխի մէ՛ջ
մտիր, ու կա՛ւը կոխէ, և աղիւսին
15 փուռը նորոգէ՛. Հոն կրակը քեզ
պիտի ուտէ. սուրը քեզ պիտի
կոտրէ, ու ջորեակի պէս քեզ
պիտի հատցընէ. քեզ ջորեակի
պէս շատցուր. քեզ մարախի պէս
16 շատցո՛ւր ։ Քու վաճառականներդ
երկինքի աստղերէն աւելի շատցու-
ցիր. ջորեակը տարածուեցաւ,
17 ետքը թռաւ ։ Քու թագակիր-
ներդ մարախի պէս, ու զօրավար-
ներդ անթիւ մարախներու պէս
են, որ ցուրտ օրը ցանկերու վրայ
կը հանգչին, երբոր արևը ծագի՝ կը
չուեն, ու անոնց տեղը ու՛ր ըլլալը
18 չգիտցուիր ։ Քու հովիւներդ կը
քնանան, ո՛վ Ասորեստանի թա-
գաւոր. քու ազնուականներդ կը
պառկին. քու ժողովուրդդ լեռ-
ներուն վրայ ցրուեցան. ու մէկը
19 չկայ որ զանոնք ժողվէ ։ Քու բեկ-
մանդ ճար չկայ. քու վէրքդ ան-
դարմանելի է. ամէն անոնք որ
քու լուրդ կը լսեն, քեզի համար
ծափ պիտի զարնեն. քանզի ամէն
ժամանակ քու չարութիւնդ որո՞ւ
վրայ անցած չէ ։

Ն. Ք. գՔ. Իրր 713

ա Մատ. Ր. 9։ Երր. Ժ. 33։
բ Տես Ցայտ. ԺԲ. 10։
գ Տես Երեմ. ԺԵ. 5։
դ Ամով. Զ. 2։
ե Երեմ. ԽԶ. 25, 26։ Եզեկ. Լ. 14-16։
զ Սաղ. ԾԼԷ. 9։ Եսա. ԺԳ. 16։ Ովս. ԺԳ. 16։
է Ովբ. Բ. 19։
ը Յովել. Գ. 3։ Աբդ. 11։
թ Երեմ. ԽԵ. 17, 27։ Գլ. Ա. 10։
ժ Յայտ. Զ. 13։
ի Երեմ. Ծ. 37։ ԾԱ. 30։
լ Սաղ. ՃԽԷ. 13։ Երեմ. ԾԱ. 30։
խ Գլ. Բ. 1։
ծ Յովել. Ա. 4։
կ Տես Յայտ. Թ. 7։
հ Տես Եւ. ԺԵ. 16։ Սաղ. ՀԶ. 6։
ձ Երեմ. Ծ. 18։ Եզեկ. ԼԱ. 3, ԺԱ։
ղ Գ. Թագ. ԻԲ. 17։
ճ Միք. Ա. 9։
մ Ողբ. Բ. 15։ Սոփ. Բ. 15։ Տես Եւ. ԺԳ. 8, ԺԱ։

բ Եսա. ԼԸ. 14։ ԾԹ. 11։
գ Եսա. ԺԳ. 7, 8։
դ Գաղ. Ե. 6։
ե Երեմ. Լ. 6։
զ Յովել. Բ. 6։
է Յոբ. Դ. 10, 11։ Եզեկ. ԺԹ. 2-7։
ը Եզեկ. ԽԹ. 3։ ԼԸ. 3։ ԼԹ. 1։ Գլ. Գ. 5։
թ Դ. Թագ. ԺԲ. 17, 19։ ԺԹ. 9, 23։
ա Եզեկ. ԻԲ. 2, 3։ ԻԴ. 6, 9։ Ամբ. Բ. 12։
բ Երեմ. ԽԷ. 3։
* Եբր. սուրին բոցը, ու նիզակին փայլակը։
գ Եսա. ԽԷ. 9, 12։
դ Գլ. Բ. 13։
ե Եսա. ԽԷ. 2, 3։ Երեմ. ԺԳ. 22, 26։ Եզեկ. ԺԶ. 37։ Միք. Ա. 11։
զ Ամբ. Բ. 16։

# ՄԱՐԳԱՐԷՈՒԹԻՒՆ ԱՄԲԱԿՈՒՄԱՅ

## ԳԼՈՒԽ Ա

1 Երկրին անօրէնութիւնը համար գանգատ ընող Ամբակումին 5 կը ցուցուի ան սոսկալի վրէժխնդրութիւնը որ Քաղդէացւոց ձեռքովը պիտի ըլլար ։ 12 Մարգարէն կը գանգատի որ ան վրէժխնդրութիւնը խիստ չար մարդոց ձեռքովը պիտի կատարուէր ։

1 Ամբակում մարգարէին՝ տեսիլքով
յայտնուած պատգամը ։
2 Մինչև ե՞րբ ով Տէր՝ [ա]աղաղա-
կեմ. ու չլսես, և զրկանաց համար
3 քեզի կանչեմ, ու չազատես ։ Ին-
չո՞ւ համար ինծի անօրէնութիւն
կը ցուցընես, և նեղութիւն կ'ե-
րևցընես. քանզի իմ առջևս յա-
փըշտակութիւն ու զրկանք կայ. և
4 դատ ու վէճ հանող կայ ։ Անոր
համար օրէնքը կը խափանի, ու
իրաւունքը 'ի գործ չդրուիր. վասն
զի [բ]անօրէնը արդարին բոլորտիքը
կ'առնէ. աս պատճառաւ դա-
տաստանը ծուռ կ'ելլէ ։
5 [գ]Ազգերուն մէջ նայեցէ՛ք ու տե-
սէք, և զարմանալով ապշեցէք.
վասն զի ձեր օրերուն մէջը անանկ
գործ մը պիտի գործեմ, որ եթէ
Յեղէ պատմուի, պիտի չհաւա-
6 տաք ։ Քանզի ահա [դ]Ես պիտի
արթընցընեմ Քաղդէացիները, ան
դառն ու արագընթաց ազգը, որ
իրենը չեղող բնակութիւններուն
տիրելու համար. երկրիս լայնու-
7 թիւնը կը պտըտի ։ Անիկայ սոս-
կալի և ահարկու է. անոր դա-
տաստանը ու իշխանութիւնը իրմէ
8 կ'ելլէ ։ Անոր ձիերը ինձերէն ա-
ւելի արագաշարժ են, ու [ե]Երե-
կոյեան գայլերէն աւելի կատղած
են. և անոր ձիաւորները պիտի
ցաթկեն. ու անոր ձիաւորները
հեռուէն պիտի գան, ու [զ]կերա-
կուրի վրայ արտորացող արծիւի
9 պէս պիտի թռչին ։ Ամէնքը զըր-
կանաց համար պիտի գան. դուն-
ղերուն երեսները դէպ 'ի *յառաջ
պիտի ըլլայ. ու աւազի պէս գե-
10 րիներ պիտի ժողվէ ։ Եւ անիկայ
թագաւորները ծաղր պիտի ընէ.
ու իշխանները անոր խաղալիք պի-
տի ըլլան. անիկայ ամէն պարսպի
վրայ պիտի խնդայ. վասն զի հող
պիտի դիզէ, ու զանիկայ պիտի

Ն. Ք. ԶՔ. իրր 626

ա Ողբ. գ. 8 ։

բ Յոբ. իա. 7 ։ Սաղ. ղգ. 3. ճ ։ Երեմ. ժբ. 1 ։

գ Ես. իթ. 14. Գործ. ժգ. 41 ։

դ Օր. իը. 49. 50 ։ Երեմ. ե. 15 ։ Տես բ Մն. լզ. 6 ։

ե Երեմ. ե. 6 ։ Սոփ. գ. 3 ։

զ Երեմ. դ. 13 ։

* Կամ՝ արևելք

11 առնէ ։ Ան ատենը անոր միտքը
պիտի փոխուի, ու պիտի հպար-
տանայ. և [է]աս իր զօրութիւնը իր
աստուծոյն ընծայելով, յանցաւոր
պիտի ըլլայ ։
12 [ը]Միթէ դուն 'ի յաւիտենից չե՞ս,
ով իմ Տէր Աստուածս, իմ Սուր-
բըս. պիտի չմեռնինք ։ Ո՛վ Տէր՝
[թ]զանիկայ դատաստանի համար ո-
րոշեցիր. ո՛վ Վէմ՝ զանիկայ յան-
դիմանելու համար հաստատեցիր ։
13 [ժ]Դուն՝ որ քու աչքերդ չարութիւն
տեսնելէն մաքուր են, ու անիրա-
ւութեան նայելու կարող չես,
ենենգաւորներուն ինչո՞ւ կը նայիս,
ամբարիշտը՝ [ի]իրմէ արդար եղողը
14 կլլած ատենը ինչո՞ւ կը լռես. Ու
մարդը ծովու ձուկերուն պէս կ'ը-
նես, սողուններուն պէս՝ որոնք ի-
15 րենց վրայ տիրող չունին ։ [լ]Անոնց
ամէնը կարթով կը հանէ. զանոնք
իր ուռկանովը կը բռնէ, և զա-
նոնք իր ցանցովը կը ժողվէ. անոր
համար կ'ուրախանայ ու կը ցնծայ.
16 Անոր համար իր ուռկանին զոհ կը
մատուցանէ, ու իր ցանցին խունկ
կը ծխէ. վասն զի անոնցմով իր
բաժինը գէր, ու իր կերակուրը
17 պարարտ է ։ Արդեօք աս պատճա-
ռաւ իր ուռկանը պիտի պարպէ՞,
ու միշտ ազգերը կոտրելէն պիտի
չդադարի՞ ։

## ԳԼ. Բ

1 Պատասխան մը ընդունելու սպասող Ամբակումին կը ցուցուի թէ պարտի համբերով սպասել ։ 5 Քաղդէացւոց վրայ հասնելու դատաստանը՝ իրենց անյագութեանը. 9 ագահութեանը. 12 անգթութեանը. 15 արբեցութեանը. 18 ու կռապաշտութեանը համար ։

1 Իմ [խ]պահպանութեանս տեղը
պիտի կենամ, ու պարսպին վը-
րայ պիտի կայնիմ, [ծ]ու պիտի բա-
պասեմ, որ տեսնեմ թէ ինծի հետ
ինչ պիտի խօսի, և թէ իմ [?]
յանդիմանութեանս վրայ ինչ
պատասխան պիտի տամ ։
2 Եւ Տէրը ինծի՝ պատասխան
տուաւ, ու ըսաւ. Տեսիլքը [կ]գրէ,
ու տախտակներու վրայ յայտնի
նշանակէ, որ զանիկայ կարդացողը
3 [հ]համարձակ կարդայ ։ Քանզի

Ն. Ք. ԶՔ. իրր 626

է Դան. ե. 4 ։

ը Սաղ. գ. 2 ։ ղդ. 2 ։ Ողբ. ե. 19 ։

թ Դ Թագ. ժթ. 25 ։ Ես. ժ. 5, 6, 7 ։ Եզեկ. լ. 25 ։

ժ Սաղ. ե. 5 ։

ի Երեմ. ժբ. 1 ։

լ Երեմ. ժզ. 16 ։ Ամով. դ. 2 ։

խ Ես. իա. 8, 11 ։

ծ Սաղ. ձե. 8 ։

կ Ես. ը. 1 ։ լ. 8 ։

հ Եբր. Ճա- ղէ ։

տեսիլքը տակաւին որոշուած
ժամանակի համար է . բայց վախ-
ճանին կ'արտորայ . սուտ պիտի
չելլէ . թէ որ ուշանայ , անոր սը-
պասէ . քանզի անշուշտ պիտի
4 գայ , ետ պիտի չմնայ ։ Ահա հը-
պարտ մարդուն հոգին իր ներսիդին
ուղիղ չէ . բայց արդարը իր հա-
5 ւատքովը պիտի ապրի ։ Մանա-
ւանդ գինին կը կատղեցնէ . հը-
պարտ մարդը հանդարտ չկենար ,
քանզի իր հոգին գերեզմանի պէս
կը լայնցնէ , ու մահուան պէս
ըլլալով՝ չկշտանար . հապա բոլոր
ազգերը իրեն կը ժողվէ , ու բոլոր
ժողովուրդները իր քովը կը դու-
6 մարէ ։ Միթէ ասոնց ամէնը ա-
նոր վրայ առակ պիտի չհանե՞ն , ու
անոր համար ծաղրական խօսքերով
պիտի չըսե՞ն . Վա՜յ անոր՝ որ իրենը
չեղածը կը շատցրնէ . (մինչև ե՞րբ
պիտի տևէ .) ու իր վրայ գրաւներ
7 կը բեռնաւորէ ։ Միթէ յանկարծ
քեզ խածնողներ պիտի չելլե՞ն ,
ու քեզի նեղութիւն տուողներ
պիտի չարթըննա՞ն , և դուն ա-
8 նոնց աւար պիտի չըլլա՞ս ։ Որով-
հետև դուն շատ ազգեր կողոպտե-
ցիր , քեզ ալ ժողովուրդներուն
բոլոր մնացորդները պիտի կողոպ-
տեն , մարդոց արիւններուն հա-
մար , ու երկրին , քաղաքին և բո-
լոր անոր մէջը բնակողներուն զըր-
կանացը համար ։
9 Վա՜յ անոր՝ որ իր տանը համար
չար ագահութեամբ բան կը վաս-
տըկի , որպէս զի իր բոյնը բարձր
տեղ դնէ , չարին ձեռքէն զինքը
10 ազատելու համար ։ Շատ ժողո-
վուրդներ կոտրելովդ , քու տանդ
վրայ անարգանք բերիր , և քու
հոգւոյդ դէմ մեղք գործեցիր ։
11 Քանզի քարը՝ պատէն պիտի աղա-
ղակէ , ու գերանը՝ շէնքին փայտե-
րուն մէջէն պատասխան պիտի տայ
անոր ։
12 Վա՜յ անոր՝ որ արիւններով
քաղաք կը շինէ , ու անիրաւու-
13 թեամբ աւան կը հաստատէ ։ Ահա
ասիկա զօրաց Տէրոջմէն չէ՞ , որ
ժողովուրդները կրակի համար
կ'աշխատին , ու ազգերը պարապ
14 տեղը կը յոգնին ։ Քանզի երկիրը՝
Տէրոջը փառացը գիտութեամբը
պիտի լեցուի , ինչպէս որ ջուրերը
ծովը կը ծածկեն ։
15 Վա՜յ անոր՝ որ քու ընկերիդ խմելիք
կը խմցընես , և քու տաքութիւնդ
ըմպելիքդ՝ առատ կը բաշխես , որ
անոնց մերկութիւնը տեսնես ։
16 Փառքէն աւելի ամօթով կշտա-
ցար . դուն ալ խմէ , ու մերկա-

ցիր . Տէրոջը աջ ձեռքին բաժակը
քեզի պիտի դառնայ , և քու փա-
ռացդ վրայ անարգանք պիտի գայ ։
17 Քանզի Լիբանանին զրկանքը քեզ
պիտի ծածկէ , ու գազաններուն
յափշտակութիւնը պիտի վախցը-
նէ , մարդոց արիւններուն հա-
մար , ու երկրին , քաղաքին և բո-
լոր անոր մէջը բնակողներուն զըր-
կանացը համար ։
18 Ի՞նչ օգուտ ունի արուեստա-
ւորին քանդակած կուռքը , ձուլա-
ծոյ կուռքը , և ստութիւն սորվե-
ցընողը , որ շինողը՝ իր շինած բա-
նին ապաւինի , ու համր կուռքեր
19 շինէ ։ Վա՜յ անոր՝ որ փայտին
կ'ըսէ . Արթընցիր , և համր քա-
րին՝ Ելի՛ր . միթէ անիկայ բան մը
պիտի սորվեցնէ՞ . ահա անիկայ
ոսկիով ու արծաթով պատած է .
բայց անոր մէջը ամենևին հոգի չը-
20 կայ ։ Սակայն Տէրը իր սուրբ
տաճարին մէջն է . անոր երեսին
առջևը լո՜ւռ կեցիր՝ ո՛վ բոլոր երկիր ։

## ԳԼ . Գ

1 Ամբակում իր աղօթքին մէջ Աստուծոյ վեհա-
փառութենէն կը սարսափի ։ 17 Իր հաստա-
տուն հաւատքը ։

1 ‖ Շիկիոնօթի վրայ . Ամբակում
մարգարէին աղօթքը ։
2 Ո՛վ Տէր՝ քու լուրդ լսեցի , ու
վախցայ . քու գործքդ տարիներուն
մէջը նորոգէ՛ , ո՛վ Տէր . տարինե-
րուն մէջը գիտցուր . բարկութեան
մէջ ողորմութիւն յիշէ ։
3 Աստուած Թեմանէն եկաւ , ու
Սուրբը՝ Փառան լեռնէն . (Սէ-
լայ .) անոր փառքը երկինքը ծած-
կեց . ու երկիրը անոր գովութեամ-
4 բը լեցուեցաւ ։ Եւ անոր պայ-
ծառութիւնը լուսոյ պէս էր . անոր
ձեռքէն՝ ճառագայթներ կ'ելլէին ,
ու անոր զօրութեանը ծածկոյթը
5 հոն էր . Անոր առջևէն ժանտախ-
տը կ'երթար , և անոր ոտքերուն
ետևէն § հրատագնապ տենդը
6 կ'ելլէր ։ Անիկայ կայնեցաւ , ու եր-
կիրը չափեց . նայեցաւ , և ազգերը
դողացուց . Ու յաւիտենական
լեռները փշրուեցան , և վաղեմի
բլուրները խոնարհեցան . անիկայ
յաւիտենական ճամբաներ ունի ։
7 ‡ Քուշանի վրանները նեղութեան
տակ տեսայ . Մադիամու երկրին
8 վրանները դողացին ։ Միթէ գե-
տերուն բարկացա՞ւ Տէրը , քու
սրտմտութիւնդ գետերուն վրա՞յ
էր , բարկութիւնդ ծովուն վրա՞յ
էր , որ քու ձիերդ , ու փրկու-
9 թեան կառքերդ հեծար ։ Քու
աղեղդ բոլորովին մերկ եղաւ , խօսքդ

Ն · ք · գ Ք · հրր 626
Դ Դան · Ժ · 14 ։ Ժա · 27 ։ 35 ։
Ե Եբր · Ժ · 37 ։
Զ Յօհ · Գ · 36 ։ Հռով · Ա · 17 ։ Գաղ · Գ · 11 ։ Եբր · Ժ · 38 ։
Է Առակ · Իէ · 20 ։ Լ · 16 ։
Ը Միք · Բ · 4 ։
* կամ Թանձր ցեխ
Թ Եա · Լգ · 1 ։
Ժ Հմր 17 ։
ԺԱ Երեմ · ԻԲ · 13 ։
ԺԲ Երեմ · ԽԹ · 16 ։ Աբդ · 4 ։
† Եբր · կամ Հեծաւ ։
ԺԳ Երեմ · ԻԲ · 13 ։ Եզեկ · ԻԴ · 9 ։ Միք · Գ · 10 ։ Նաւ · Գ · 1 ։
ԺԴ Երեմ · Ծա · 58 ։
ԺԵ Եա · ԺԱ · 9 ։
‡ Եբր · տաքութիւնդ
ԺԶ Ծն · Թ · 22 ։
ԺԷ Երեմ · ԻԵ · 26, 27 ։ Ծա · 57 ։

Ն · ք · գ Ք · հրր 626
Ը Հմր 8 ։
ԺԹ Եա · Խդ · 9 ։ 10 ։ Խգ · 2 ։
Ի Երեմ · Ժ · 8 ։ 14 ։ Զաք · Ժ · 2 ։
ԻԱ Սաղ · ԾԺԵ · 5 ։ Ա Կոր · ԺԲ · 2 ։
ԻԲ Սաղ · ԻԷ · 17 ։
ԻԳ Սաղ · ԺԱ · 4 ։
ԻԴ Սոփ · Ա · 7 ։ Զաք · Բ · 13 ։
‖ կամ Մեղեդիներու տես Սաղ · Է ին վերնագիրը ։
ԻԵ Օր · ԼԳ · 2 ։ Դատ · Ե · 4 ։ Սաղ · ԿԸ · 7 ։
ԻԶ Տես Նաւ · Ա · 3 ։
ԻԷ Օր · ԼԲ · 24 ։
§ կամ կայծակ · Սաղ · ԿԸ · 8 ։
ԻԸ Նաւ · Ա · 5 ։
ԻԹ Ծն · ԽԹ · 26 ։
‡ կամ Եթովպիոյ
Լ Օր · ԼԳ · 26, 27 ։ Սաղ · ԿԸ · 3 ։ Հմր 15 ։

Ն. Ք. զՔ. էրր 626

ա Սաղ. ՀԸ. 15, 16 ։ ՃԵ. 41 ։
բ Եզ. ԺԹ. 16, 18 ։ Դատ. Ե. 4, 5 ։ Սաղ. ԿԸ. 8 ։ ՀԷ. 18 ։ ՃԺԴ. 4 ։
ր Եզ. ԺԴ. 22 ։ Յես. Գ. 16 ։
դ Յես. Ժ. 12, 13 ։
ե Սաղ. ԺԸ. 14 ։ ՀԷ. 17, 18 ։ Տես Յես. Ժ. 11 ։
զ Երեմ. ԾԱ. 33 ։ Ամով. Ա. 3 ։ Միք. Դ. 13 ։
է Յես. Ժ. 24 ։ Ժա. Ց. 12 ։ Սաղ. ԿԸ. 21 ։
ը Հմր. Տ. Սաղ. ՀԷ. 19 ։

աղեղ ցեղերուն ըրած երդումներուդ ,
ու քու խօսքիդ պէս . ( Սէլա . )
Երկիրը գետերով պատռեցիր ։
10 Լեռները քեզ տեսան , ու դողա-
ցին . ջուրերուն յորդութիւնը
անցաւ . անդունդը իր ձայնը
տուաւ , ու իր ձեռքերը վեր վեր-
11 ցուց ։ Արեւը ու լուսինը իրենց
կարգին մէջը կայնեցան . անոնք
քու նետերուդ լուսովը , և քու
շողշողուն նիզակիդ պայծառու-
12 թիւնովը քալեցին ։ Երկրին վրայ
սրտմտութեամբ պտըտեցար , ու
բարկութեամբ ազգերը կոխեցիր ։
13 Քու ժողովուրդիդ փրկութեանը
համար՝ քու օծեալիդ հետ փրկու-
թեան համար ելար . անօրէնին
տունէն գլուխ ճզմեցիր , հիմը մինչև
14 պարանոցը բանալով ։ ( Սէլա ։ ) Ի-
րենց գաւազաններովը իրենց գլխա-
ւորներուն գլուխը խորտակեցիր .
զիս ցրուելու համար փոթորիկի
պէս ելան . անոնց ուրախութիւ-
նը՝ տնանկը գաղտուկ ուտելու
15 պէս էր ։ Քու ձիերովդ ծովուն
վրայ՝ շատ ջուրերուն խռովու-
16 թեանը վրայ քալեցիր ։ Լսեցի ,
ու փորս սարսափեցաւ . ձայնէն
շրթունքներս դողացին . ոսկորնե-
րուս մէջը փտութիւն մտաւ , ու
եղած տեղս սարսափեցայ , որ հան-
գստութիւն ունենամ նեղու-
թեան օրը՝ երբոր ժողովուրդին ել-
լէ ան որ իր գունդերովը անոր վրայ
պիտի յարձակի ։
17 Թէև թզենին ծաղիկ չտայ , ու
որթերու վրայ պտուղ չըլլայ , ու
ձիթենիին բերքը ստէ , ու արտերը
կերակուր չտան , ու փարախէն ոչ-
խարը կտրի , և գոմերու մէջ ար-
18 ջառ չըլլայ , Սակայն ես Տէրոջ-
մով պիտի ցնծամ . իմ փրկու-
թեանս Աստուծովը պիտի ուրա-
19 խանամ ։ Տէր Եհովան իմ զօրու-
թիւնս է , ու իմ ոտքերս եղնիկի
ոտքերուն պէս պիտի ընէ , և զիս
իմ բարձր տեղերուս վրայ պիտի
պտըտցընէ ։
Գլխաւոր երգեցողին , իմ զար-
նելու նուագարաններուս վրայ ։

Ն. Ք. զՔ. էրր 626

ա Սաղ. ՃԺԹ. 120 ։ Երեմ. ԻԳ. 9 ։
բ Յոբ. ԺԳ. 15 ։
գ Ես. Խա. 16 ։ Կա. 10 ։
դ Սաղ. ԻԷ. 1 ։
ե Բ Թագ. ԻԲ. 34 ։ Սաղ. ԺԸ. 33 ։
զ Օր. ԼԲ. 13 ։ ԼԴ. 29 ։

# ՄԱՐԳԱՐԷՈՒԹԻՒՆ ՍՈՓՈՆԻԱՅ

Ն. Ք. զՔ. էրր 630

## ԳԼՈՒԽ Ա

1—18 Զանազան մեղքերու համար Աստուծոյ անաչառ դատաստանները Յուդայի դէմ ։

1 Տէրոջը խօսքը՝ որ Եզեկիայի որ-
դւոյն Ամարիայի որդւոյն Գո-
դողիայի որդւոյն Քուսիի որդւոյն
Սոփոնիային եղաւ , Յուդայի թա-
գաւորին Ամոնի որդւոյն Յովսիա-
յին օրերը ։
2 Երկրի երեսէն ամէն բանը բոլո-
րովին պիտի կորսնցընեմ , կ՚ըսէ
3 Տէրը ։ Մարդը ու անասունը
պիտի կորսնցընեմ . երկինքին
թռչունները , ու ծովուն ձուկե-
րը , և գայթակղութիւնները ամ-
բարիշտներուն հետ պիտի կորսն-
ցընեմ , ու երկրիս երեսէն մարդը
4 պիտի կտրեմ , կ՚ըսէ Տէրը ։ Եւ
իմ ձեռքս Յուդայի վրայ , ու Ե-
րուսաղէմի բոլոր բնակչացը վրայ
պիտի երկընցընեմ . ու հոս տեղէս
բնաջինջ պիտի ընեմ Բահաղին
մնացորդը , Քուրմերուն անունը՝
5 քահանաներուն հետ , Եւ տա-
նիքներու վրայ երկնից զօրքերուն
երկրպագութիւն ընողները , Ու
երկրպագութիւն ընելով՝ Տէրոջ-
մով երդում ընողները , և Մեղ-
6 քոմով երդում ընողները , Ու Տէ-
րոջմէ ետ դարձողները , ու Տէրը
չփնտռողները , և զանիկայ չխընդ-
րողները ։
7 Տէր Եհովային առջևը լուռ կե-
ցիր . քանզի Տէրոջը օրը մօտ է .
քանզի Տէրը զոհ պատրաստեց , իր
8 կոչնականները *հրաւիրեց ։ Եւ
պիտի ըլլայ որ Տէրոջը զոհին
օրը՝ իշխանները ու թագաւորին
տղաքները , ու բոլոր օտար զգեստ
9 հագնողները պիտի պատժեմ ։ Եւ
ան օրը սեմին վրայէն բոլոր ցատ-
կողները՝ իրենց տիրոջը տունը
զրկանքով ու նենգութեամբ լեցը-
10 նողները պիտի պատժեմ ։ Ու պի-
տի ըլլայ որ ան օրը՝ կ՚ըսէ Տէրը ,
Ձկանց դռնէն աղաղակի ձայն , և
Մասենայէն հառաչանք , ու բլուր-
ներէն մեծ կոտորած պիտի ըլլայ ։
11 Ողբացէ՛ք՝ ով Մաքթեսի բնակիչ-
ները . քանզի բոլոր վաճառական
ժողովուրդը կորսուեցաւ . բոլոր
արծաթ բերողները կոտրեցան ։
12 Ու պիտի ըլլայ որ ան ժամանա-
կը՝ Երուսաղէմը ճրագներով պիտի
քննեմ , ու գինիի պէս իրենց մրու-

ա Ովս. Գ. 3 ։
բ Եզեկ. Է. 19 ։ ԺԴ. 3, 4, 7 ։ Մատ. ԺԳ. 41 ։
գ Կամ. քուրմերու՝ էրր 624 ։
դ Բ Թագ. ԻԳ. 4, 5 ։
ե Ովս. Ժ. 5 ։
զ Դ Թագ. ԻԳ. 12 ։ Երեմ. ԺԹ. 13 ։
է Դ Թագ. ԻԱ. 21 ։ Դ Թագ. ԺԵ. 33, 41 ։
ը Ես. ԽԸ. 1 ։ Ովս. Գ. 13 ։

Ն. Ք. զՔ. էրր 630

ա Յես. ԻԳ. 7 ։ Դ Թագ. ԺԱ. 33 ։
բ Ես. Ա. 4 ։ Երեմ. Բ. 13, 17 ։ ԺԵ. 6 ։
գ Ովս. Է. 7 ։
դ Ամբ. Բ. 20 ։ Զաք. Բ. 13 ։
ե Ես. ԺԳ. 6 ։
զ Ես. ԼԴ. 6 ։ Երեմ. ԽԶ. 10 ։ Եզեկ. ԼԹ. 17 ։ Յայտ. ԺԹ. 17 ։
* Եբր. սրբեց ։
է Երեմ. ԼԹ. 6 ։
ը Բ Մն. ԼԳ. 14 ։
թ Յակ. Ե. 1 ։
ժ Երեմ. ԽԸ. 11 ։ Ամով. Զ. 1 ։

Ն • Ք • ԴՔ • Իրր 630

Ղ Սաղ • ԴԴ • 7 •
Ճ Բ Օր • ԻԸ • 30 • 39 • Ամով • Ե • 11 •
Մ Միք • Զ • 15 •
Յ Յովել • Բ • 1 • 11 •
Ն Եւ • ԻԲ • 5 • Երեմ • Լ • 7 • Յովել • Բ • 2 • 11 • Ամով • Ե • 18 • Հմր 18 •
Շ Երեմ • Դ • 19 •
Ո Բ Օր • ԻԸ • 29 • Եւ • ԾԹ • 10 •
Չ Սաղ • ՀԹ • 3 •
Պ Սաղ • ՁԴ • 10 • Երեմ • Թ • 22 • ԺԶ • 4 •
Ջ Առակ • ԺԱ • 4 • Եզեկ • Է • 19 •
Ռ Գւ • Գ • 8 •
Ս Հմր 2 • 3 •

րին վրայ հանգիստ նստող մարդիկ-
ները պիտի պատժեմ , որոնք ի-
րենց սրտին մէջը կ'ըսեն . Տէրը ո՛չ
բարիք պիտի ընէ , և ոչ չարիք ։
13 Եւ անոնց ստացուածքը՝ աւար , ու
անոնց տուները՝ աւերակ պիտի ըլ-
լան . և տուներ պիտի շինեն , բայց
Ճ անոնց մէջը պիտի չբնակին , ու այ-
գիներ պիտի տնկեն , բայց Մ անոնց
գինին պիտի չխմեն ։
14 Յ Տէրոջը մեծ օրը մօտ է , մօտ է ,
ու խիստ կ'արտորայ . Տէրոջը օ-
րուան ձայնը լաց է . զօրաւորը
հոն դառնապէս պիտի աղաղակէ ։
15 Ն Այն օրը՝ բարկութեան օր է . նե-
ղութեան ու տառապանաց օր ,
կործանման ու աւերման օր , խա-
ւարի ու մէգի օր , ամպի ու մա-
16 ռախուղի օր է . Պարսպաւոր քա-
ղաքներու դէմ , և բարձր աշտա-
րակներու դէմ՝ Շ փողի ու աղա-
17 ղակի օր է ։ Ու մարդիկները նե-
ղութեան մէջ պիտի ձգեմ . և
Ո կոյրերու պէս պիտի պտըտին ,
քանզի Տէրոջը դէմ մեղք գործե-
ցին . ու Չ անոնց արիւնը փոշիի
պէս , ու մարմինները Պ աղբի պէս
18 պիտի թափուի ։ Ջ Տէրոջը բար-
կութեան օրը՝ անոնց արծաթը ու
ոսկին անգամ զանոնք ազատելու
կարող պիտի չըլլան . հապա բոլոր
երկիրը Ռ անոր նախանձին կրակովը
պիտի սպառի . քանզի Ս անիկայ
խիստ շուտով երկրիս բոլոր բնա-
կիչները պիտի հատցընէ ։

ԳԼ • Բ

1 Ապաշխարելու յորդորանք մը ։ 4 Փղշտացւոց , 8 Մովաբի ու Ամմոնի , 12 Եթեովպիայի ու Ասորեստանի դատաստանները ։

1 * Ա Ժողվուեցէ՛ք ձեր անձերը , քննե-
2 ցէ՛ք՝ ո՛վ չամչցող ազգ , Դեռ
նախասահմանութիւնը չծնած ,
օրը Բ մղեղի պէս չանցած , դեռ
Գ Տէրոջը սաստիկ բարկութիւ-
նը ձեր վրայ չեկած , դեռ Տէրոջը
բարկութեան օրը ձեր վրայ չեկած ։
3 Դ Տէրը փնտռեցէ՛ք՝ Ե ո՛վ երկրիս բո-
լոր խոնարհները , դուք որ անոր
իրաւունքը 'ի գործ կը դնէք . ար-
դարութիւն փնտռեցէք , խոնար-
հութիւն փնտռեցէք , Ե դուցէ
Տէրոջը բարկութեան օրը պա-
4 հուիք ։ Քանզի Զ Գազան պիտի
թողուի . Ասկաղոնը ամայի պի-
տի ըլլայ . Ազովտոսը Է կէս օրուան
ատենը պիտի վռնտեն . և Ակկա-
5 րոնը արմատէն պիտի խլուի ։ Վա՜յ
Ը ծովեզերքը բնակողներուն , Քե-
րեթիներուն ազգին . Տէրոջը խօս-
քը քեզի դէմ է , ո՛վ Թ Փղշտացւոց
երկիրը Քանան . քեզ ալ պիտի
աւրեմ , անանկ որ բնակիչ չունե-

* Կամ՝ ժողվուեցէ՛ք՝ ժողվուեցէք • Յովել • Բ • 16 •
Ա Յոբ • ԻԱ • 18 • Սաղ • Ա • 4 • Եւ • ԺԷ • 13 • Ովս • ԺԳ • 3 •
Բ Դ Թագ • ԻԳ • 26 •
Գ Սաղ • ԾԵ • 4 • Ամով • Ե • 6 •
Դ Սաղ • ՀԴ • 9 •
Ե Յովել • Բ • 14 • Ամով • Ե • 15 • Յովն • Գ • 9 •
Զ Երեմ • ԽԷ • 4 • 5 • Եզեկ • ԻԵ • 15 • Ամով • Ա • 6 • 7 • 8 • Զաք • Թ • 5 • 6 •
Է Երեմ • Զ • 4 • ԺԵ • Տ •
Ը Եզեկ • ԻԵ • 16 •
Թ Յես • ԺԳ • 3 •

6 նաս ։ Եւ ծովեզերքը՝ հովիւներու
† բնակարաններ , ու աւազաններ՝ ,
ու Ժ հօտերու փարախներ պիտի ըլ-
7 լայ ։ Եւ ծովեզերքը Յուդայի տա-
նը Ի մնացորդին պիտի ըլլայ . հոն
պիտի արածին . իրիկունը Ասկա-
ղոնի տուներուն մէջ պիտի պառ-
կին . քանզի անոնց Տէր Աստուա-
ծը Լ անոնց այցելութիւն պիտի
ընէ . և Խ անոնց գերութիւնը պիտի
դարձընէ ։
8 Ծ Մովաբին նախատինքը , ու
Կ Ամմոնի որդւոցը հայհոյութիւն-
ները լսեցի , որ անոնք իմ ժողո-
վուրդս նախատեցին , ու Հ անոնց
9 սահմանին դէմ հպարտացան ։ Ա-
նոր համար Իսրայէլին Աստուածը՝
զօրաց Տէրը այսպէս կ'ըսէ . Կեն-
դանի եմ ես , որ Ձ Մովաբը Սոդոմի
պէս , ու Ղ Ամմոնի որդիքը Գոմորի
պէս՝ Ճ եղինձներու կալուածք , և
աղի հանք , ու յաւիտեան ամա-
յութիւն պիտի ըլլայ . Մ իմ ժո-
ղովուրդիս մնացորդը զանոնք պի-
տի յափշտակէ , ու իմ ազգիս մնա-
ցորդները զանոնք պիտի ժառան-
10 գեն ։ Ասիկայ Յ անոնց հպարտու-
թեանը համար իրենց պիտի ըլլայ .
քանզի անոնք զօրաց Տէրոջը ժո-
ղովուրդը նախատեցին , ու անոր
11 դէմ հպարտացան ։ Տէրը անոնց
վրայ ահարկու պիտի ըլլայ . քանզի
անիկայ երկրիս բոլոր աստուածնե-
րը բնաջինջ պիտի ընէ , և Ն ազգաց
բոլոր կղզիները՝ ամէն մէկը իր տե-
ղէն՝ Շ երկրպագութիւն պիտի ընեն
անոր ։
12 Ո Դուք ալ՝ ո՛վ Եթեովպացիք՝
Չ իմ սրովս պիտի սպաննուիք ։
13 Եւ անիկայ իր ձեռքը հիւսիսին
վրայ պիտի երկընցնէ , ու Պ Ասո-
րեստանցին պիտի կորսընցընէ . և
Նինուէն աւերակի , ու անապատի
պէս չոր երկրի պիտի դարձընէ .
14 Եւ Ջ անոր մէջը հօտեր՝ Ռ ազգաց
բոլոր գազանները պիտի պառկին .
Ս հաւալուսը ու ոզնին ալ՝ անոր
խոյակներուն մէջտեղուանքը գի-
շերը պիտի անցընեն . պատուհան-
ներէն ձայն պիտի հնչուի . սեմե-
րուն մէջ աւերում պիտի ըլլայ .
քանզի Վ եղևնափայտը պիտի քա-
15 կուի ։ Զբօսասէր քաղաքը ասիկայ
է , Տ որ ապահովութեամբ կը բնա-
կէր , Ր որ իր սրտին մէջը կ'ըսէր Թէ՝
Ես եմ , ու ինծմէ ուրիշ չկայ . ի՜նչ-
պէս աւերակ ու գազանաց խշտի
եղաւ . անկէ ամէն անցնողը Ց պի-
տի սուլէ , ու Ւ ձեռքը պիտի շար-
ժէ ։

ԳԼ • Գ

1 Երուսաղէմը սաստիկ կը յանդիմանուի զանազան մեղքերու համար . 8 կը քաջալերուի որ

Ն • Ք • ԴՔ • Իրր 630

† Կամ՝ գետնափոր բնակարաններ ,
Ժ Տես Եւ • ԺԷ • 2 • Հմր 14 •
Ի Եւ • ԺԱ • 11 • Միք • Գ • 7 ; Ե • 7 , Տ • Անգ • Ա • 12 • Բ • 2 • Հմր 9 •
Լ Եւ • Դ • 31 ; Ղուկ • Ա • 68 •
Խ Սաղ • ԾԶ • 1 • Երեմ • ԽԹ • 14 • Գւ • Գ • 20 •
Ծ Երեմ • ԽԲ • 27 • Եզեկ • ԻԵ • Տ •
Կ Եզեկ • ԻԵ • 3 • 6 •
Հ Երեմ • ԽԹ • 1 •
Ձ Եւ • ԺԵ • Երեմ • ԽԲ • Եզեկ • ԻԵ • 9 • Ամով • Բ • 1 •
Ղ Ամով • Ա • 13 •
Ճ Ծն • ԺԹ • 25 • Բ Օր • ԻԹ • 23 • Եւ • ԺԳ • 19 • ԼԴ • 13 • Երեմ • ԽԹ • 18 • Ծ • 40 •
Մ Հմր 7 •
Յ Եւ • ԺԳ • 6 • Երեմ • ԽԲ • 29 •
Ն Ծն • Ժ • 5 •
Շ Մաղ • Ա • 11 • Յովհ • Դ • 21 •
Ո Եւ • ԺԲ • 1 • Ի • 4 Երեմ • ԽԶ • 9 • Եզեկ • Լ • 9 •
Չ Սաղ • ԺԵ • 13 •
Պ Եւ • Ժ • 12 • Եզեկ • ԼԱ • 3 • Նաւ • Ա • 1 • Բ • 10 • Գ • 15 • 18 •
Ջ Հմր 6 •
Ռ Եւ • ԺԴ • 21 • 22 •
Ս Եւ • ԼԴ • 11 • 14 •
Վ Երեմ • ԻԸ • 14 •
Տ Եւ • ԽԷ • 8 •
Ր Յայտ • ԺԸ • 7 •
Ց Յոբ • ԻԷ • 23 • Ողբ • Բ • 15 • Եզեկ • ԻԷ • 36 •
Ւ Նաւ • Գ • 19 •

Ն. Ք. ԶՃ. ԻՐ 630

Իսրայէլին գերեդարձութեանը սպասէ, 14 ու անոր Աստուծով փրկուելուն համար ուրախանայ։

1 Վա՜յ ապստամբ ու պիղծ քաղաքին,
հարստահարութիւն ընող քա-
2 ղաքին։ Խօսք մտիկ չըրաւ,
խրատ չընդունեց. Տէրոջը չա-
պաւինեցաւ, իր Աստուծոյն չմօ-
3 տեցաւ։ Անոր իշխանները անոր
մէջը մռնչող առիւծներ են. անոր
դատաւորները Երեկոյեան գայլեր
են, որ մինչև առտու բան մը չեն
4 թողուր։ Անոր մարգարէները
անպարծ ու նենգաւոր մարդիկներ
են. անոր քահանաները սրբարանը
պղծեցին, ու օրէնքը բռնադա-
5 տեցին։ Արդար Տէրը անոր մէջն
է. անիկայ անօրէնութիւն չգոր-
ծեր. առտուէ առտու իր իրա-
ւունքը 'ի լոյս կը հանէ, ու եւ
չմնար. բայց անիրաւը ամչնալ
6 չգիտեր։ Ազգերը բնաջինջ ըրի.
անոնց աշտարակները կործանե-
ցան. անոնց փողոցները աւրեցի,
անանկ որ անոնցմէ անցնող
չըլլայ. անոնց քաղաքները ա-
մայացան, անմարդ ու անբնակ
7 եղան։ Ըսի որ՝ Դուն անշուշտ
ինծմէ պիտի վախնաս, ու խրատ
պիտի ընդունիս. և անոր բնակա-
րանը բնաջինջ չըլլայ, որչափ որ
զանիկայ պատժեմ. սակայն ա-
նոնք կանուխ ելան, ու իրենց
բոլոր գործքերը ապականեցին։
8 Ուրեմն ինծի սպասեցէք, կ'ըսէ
Տէրը, մինչև այն օրը՝ որ որսի հա-
մար ոտք ելլեմ. քանզի իմ վճիռս
ազգերը ժողվել, թագաւորու-
թիւնները գումարել է, որ անոնց
վրայ իմ սրտմտութիւնս՝ իմ բոլոր
սաստիկ բարկութիւնս թափեմ.
քանզի բոլոր երկիրը իմ նախան-
ձիս կրակովը պիտի սպառի։
9 Վասն զի այն ժամանակը ժողո-
վուրդներուն շրթունքները՝ մաքուր
շրթունքներու պիտի դարձընեմ,
որ ամէնքը Տէրոջը անունը կանչեն,
ու մէկ սրտով անոր ծառայու-
10 թիւն ընեն։ Եթէովպիայի գե-
տերուն անդիի կողմէն իմ աղօ-
թողներս, իմ ցրուածներուս աղ-
11 ջիկը՝ իմ ընծաս պիտի բերեն։ Այն
օրը պիտի չամչնաս քու բոլոր
գործքերէդ, որոնցմով ինծի դէմ
յանցանք ըրիր. քանզի այն ատենը
քու հպարտութեամբդ զուար-
ճացողները քու մէջէդ պիտի վեր-
ցընեմ. ու մէյմըն ալ իմ սուրբ
լեռանս վրայ գոռոզութիւն պիտի
12 չընես. Եւ քու մէջդ խոնարհ ու
աղքատ ժողովուրդ՝ մնացորդ պի-
տի թողում, ու Տէրոջը անուանը
13 պիտի յուսան։ Իսրայէլին մնա-
ցորդը անօրէնութիւն պիտի չը-
նեն, ու սուտ պիտի չխօսին, և
անոնց բերնին մէջ նենգաւոր լե-
զու պիտի չգտնուի. քանզի ա-
նոնք պիտի արածին, ու պիտի
պառկին; ու վախցընող պիտի չըլ-
լայ։
14 Ցնծա՛, ո՛վ Սիօնի աղջիկ,
բարձրաձայն աղաղակէ, ո՛վ Իսրա-
յէլ. բոլոր սրտով ուրախ ու
զուարթ եղիր, ո՛վ Երուսաղէմի
15 աղջիկ։ Տէրը քու դատաստան-
ներդ վերցուց, քու թշնամիդ
վռնտեց. Իսրայէլին թագաւո-
րը՝ Տէրը քու մէջդ է. մէյմըն ալ
չարիք պիտի չտեսնես։
16 Այն օրը Երուսաղէմին պիտի ը-
սուի. Մի՛ վախնար, ու Սիօնին՝
17 Ձեռքերդ չթուլնան։ Քու Տէր
Աստուածդ քու մէջդ զօրաւոր է,
անիկայ քեզ պիտի փրկէ. անիկայ
քեզի համար ուրախութեամբ պի-
տի զուարճանայ, ու իր սիրովը
քեզ թողութիւն պիտի տայ, և
քու վրադ ցնծութեամբ պիտի ու-
18 րախանայ։ Հանդիսաւոր տօնե-
րու համար տրտմածները պիտի
ժողվեմ, որոնք քեզմէ էին, ու ա-
նոնց վրայ նախատինքը բեռ էր։
19 Ահա՛ ես այն ժամանակը՝ քու բոլոր
նեղիչներդ պիտի սպառեմ. և
կաղը պիտի ազատեմ, ու վռըն-
տուածը պիտի ժողվեմ. և զանոնք
գովելի ու անուանի պիտի ընեմ այն
բոլոր երկիրներուն մէջ՝ ուր որ
20 նախատինք կրեր էին։ Այն ատե-
նը ձեզ ետ պիտի բերեմ, և այն
ատենը ձեզ պիտի ժողվեմ. վասն
զի երկրիս բոլոր ժողովուրդներուն
մէջ ձեզ անուանի ու գովելի պի-
տի ընեմ, երբոր ձեր գերութիւնը
ձեր աչքերուն առջևը ետ դարձը-
նեմ, կ'ըսէ Տէրը։

Երեմ. իբ. 21։ Երեմ. է. 3։ Եզեկ. իբ. 27։ Միք. գ. 9. 10. 11։ Ամբ. ա. 8։ Երեմ. իգ. 11. 32։ Ողբ. բ. 14։ Ովս. թ. 7։ Եզեկ. իբ. 26։ Բ Օր. լբ. 4։ Հռմ 15. 17։ Տես Միք. գ. 11։ Երեմ. գ. 3։ զ. 15։ ը. 12։ Երեմ. ը. 6։ Ծն. զ. 12։ Սաղ. իէ. 14։ լէ. 34։ Առակ. ի. 22։ Յովէլ. գ. 2։ Գլ. ա. 18։ Եբրայական Տես Սաղ. կը. 31։ Ես. ժը. 1. 7։ կ. 4. 5։ Մաղ. ա. 11։ Գոր. ը. 27։

Ն. Ք. ԶՃ. ԻՐ 630

Երեմ. է. 4։ Միք. գ. 11։ Մատ. գ. 9։ Ես. ժգ. 32։ Զաք. ժա. 11։ Մատ. ե. 3։ ա Կոր. ա. 27. 28։ Յակ. բ. 5։ Միք. դ. 7։ Գղ. բ. 7։ Ես. կ. 21։ Ես. կզ. 8։ Յայտ. ժդ. 5։ Եզեկ. լդ. 28։ Միք. դ. 4։ է. 14։ Ես. ժբ. 6։ ծգ. 1։ Զաք. բ. 10։ թ. 9։ Յօհ. ա. 49։ Հռմ 5. 17։ Եզեկ. խը. 35։ Յայտ. է. 15։ իա. 3. 4։ Ես. լե. 3. 4։ Եբր. ժբ. 12։ Հռմ 15։ Բ Օր. լ. 9։ Ես. կբ. 5։ կե. 19։ Երեմ. լբ. 41։ Ողբ. բ. 6։ Եզեկ. լդ. 16։ Միք. դ. 6. 7։ Ես. ժա. 12։ իէ. 12։ ծզ. 8։ Եզեկ. իը. 25։ լգ. 13։ լէ. 21։ Ամով. թ. 14։

# ՄԱՐԳԱՐԷՈՒԹԻՒՆ ԱՆԳԷԱՅ

## ԳԼՈՒԽ Ա

*1 Անգէ կը յանդիմանէ ժողովուրդը՝ որ տաճարին շինութեանը համար անհոգութիւն կ'ընէին . 7 շինութիւնը յառաջ տանելու կը գրգռէ զանոնք ։ 12 Աստուծոյ օգնութիւնը կը խոստանայ անոնց՝ երբոր իրենք յօժարամտութեամբ գործը յառաջ տանին ։*

1 ᵃԴարեհ Թագաւորին երկրորդ
տարին վեցերորդ ամիսը՝ ամսուն առաջին օրը՝ Տէրոջը խօսքը
Անգէ մարգարէին ձեռքովը Յուդայի իշխանին ᵇՍաղաթիէլեան Զօրաբաբէլին , ու մեծ քահանային
ᶜՅովսեդեկեան ᵈՅեսուին եղաւ ,
2 ըսելով . Զօրաց Տէրը կը խօսի ու
այսպէս կ'ըսէ . Աս ժողովուրդը
կ'ըսէ թէ , ժամանակը չէ հասած ,
Տէրոջը տունը շինելու ժամանա-
3 կը ։ Եւ ᵉԱնգէ մարգարէին ձեռ-
քովը Տէրոջը խօսքը եղաւ , ըսելով .
4 ᶠԱրդեօք ժամանակ է որ դուք ձե-
ղունավարդ տուներնուդ մէջ բը-
նակիք , ու աս տունը աւերակ
5 մնայ ։ Սակայն հիմա զօրաց Տէրը
այսպէս կ'ըսէ . ᵍՁեր ճամբաներուն
6 վրայով մտածեցէ՛ք ։ ʰՇատ ցա-
նեցիք , բայց քիչ բերիք . կերաք ,
բայց չկշտացաք . խմեցիք , բայց
ծարաւնիդ չանցուցիք . հագուե-
ցաք , բայց չտաքցաք . ու ⁱվարձ-
քով բանողը՝ ծակ քսակի համար
կը վաստըկի իր վարձքը ։
7 Զօրաց Տէրը այսպէս կ'ըսէ .
Ձեր ճամբաներուն վրայով մտա-
8 ծեցէ՛ք ։ Լեռը ելէք , փայտ բերէք ,
ու տունը շինեցէ՛ք , և անոր պիտի
հաճիմ , ու պիտի փառաւորիմ ,
9 կ'ըսէ Տէրը ։ ʲՇատին նայեցաք ,
և ահա քիչ եղաւ . Ձեր տուները
անգամ բերիք , ᵏբայց անոր վրայ
փչեցի ։ Ինչո՞ւ համար՝ կ'ըսէ
զօրաց Տէրը ։ Իմ տանս համար ,
որ անիկայ աւերակ է . ու ձեզմէ
ամէն մէկը իր տունը կը վազէ ։
10 Անոր համար ˡերկինքը ձեր վրայէն
իր ցօղը ետ կը պահէ , ու երկիրն
11 ալ իր պտուղը չտար ։ Ու ես
երկրի վրայ , ու լեռներուն վրայ ,
և ցորենին վրայ , ու գինիին վրայ ,
ու եղին վրայ , ու գետնի բերքե-
րուն վրայ , և մարդոց վրայ , ու ա-
նասուններուն վրայ , և ᵐձեռաց

Ն . Ք . ԴՔ . Իրր 520

ᵃ Եզր . Դ . 24 ։ Ե . 1 ։ Զաք . Ա . 1 ։
ᵇ Ա Մն . Գ . 17 , 19 ։ Եզր . Գ . 2 ։ Մատ . Ա . 12 ։ Ղու . Գ . 27 ։
ᶜ Ա Մն . Զ . 15 ։
ᵈ Եզր . Գ . 2 ։ Ե . 2 ։
ᵉ Եզր . Ե . 1 ։
ᶠ Բ Թագ . Է . 2 ։ Սաղ . ճլբ . 3 , 5 ։
ᵍ Ողբ . Գ . 40 ։ Հմր 7 ։
ʰ Բ Օր . ԻԸ . 38 ։ Ովս . Դ . 10 ։ Միք . Զ . 14 , 15 ։ Գլ . Բ . 16 ։
ⁱ Զաք . Ը . 10 ։
ʲ Գլ . Բ . 16 ։
ᵏ Գլ . Բ . 17 ։
ˡ Ղև . ԻԶ . 19 ։ Բ Օր . ԻԸ . 23 ։ Գ Թագ . Ը . 35 ։
ᵐ Գլ . Բ . 17 ։

բոլոր վաստակին վրայ՝ ⁿերաշտու-
թիւն կանչեցի ։
12 ᵒԱն ատենը Սաղաթիէլեան Զօ-
րաբաբէլը , ու մեծ քահանան Յով-
սեդեկեան Յեսուն , և ժողովուր-
դին բոլոր մնացորդը մտիկ ըրին
իրենց Տէր Աստուծոյն ձայնին , ու
Անգէ մարգարէին խօսքերուն , ինչ-
պէս որ իրենց Տէր Աստուածը զա-
նիկայ խրկեր էր . ու ժողովուրդը
13 Տէրոջը երեսէն վախցաւ ։ Եւ Տէ-
րոջը դեսպանը Անգէն՝ Տէրոջը
դեսպանութեամբը ժողովուրդին
խօսեցաւ , ու ըսաւ . ᵖԵս ձեզի
14 հետ եմ , կ'ըսէ Տէրը ։ ᵠԵւ Տէրը՝
ʳՅուդայի իշխանին՝ Սաղաթիէ-
լեան Զօրաբաբէլին հոգին , ու մեծ
քահանային Յովսեդեկեան Յեսու-
ին հոգին , և ժողովուրդին բոլոր
մնացորդին հոգին արթընցուց .
ˢու գացին , և իրենց Աստուծոյն՝
զօրաց Տէրոջը տանը մէջ աշխա-
15 տեցան , Դարեհ Թագաւորին երկ-
րորդ տարին՝ վեցերորդ ամսուն
քսանուչորսերորդ օրը ։

## ԳԼ . Բ

*1 Մարգարէն կը քաջալերէ ժողովուրդը որ բոլոր սրտով գործեն , խոստանալով որ առջի տաճարին փառքէն աւելի պիտի ըլլայ աս երկրորդին փառքը ։ 10 Սուրբ ու անսուրբ բաներուն օրինակովը կը ցուցընէ թէ իրենց մեղքերը գործին արգելք կ'ըլլան ։ 20 Աստուծոյ խոստմունքը Զօրաբաբէլին կը տըրուի ։*

1 Եօթներորդ ամսուն քսանումէկ-
երորդ օրը Անգէ մարգարէին
ձեռքովը Տէրոջը խօսքը եղաւ , ը-
2 սելով . Հիմա Յուդայի իշխանին՝
Սաղաթիէլեան Զօրաբաբէլին , ու
մեծ քահանային՝ Յովսեդեկեան
Յեսուին , և ժողովուրդեան մնացոր-
դին խօսէ ու ըսէ .
3 ᵃՁեր մէջը մնացած ո՞վ կայ , որ
աս տունը իր առջի փառաւորու-
թեամբը տեսած ըլլայ . ու հիմա
զանիկայ ի՞նչպէս կը տեսնէք ,
ᵇմիթէ ասիկայ անոր քովը ոչինչ
բանի մը պէս չէ՞ ձեր աչքերուն
4 առջեւը ։ Բայց արդ ᶜզօրացի՛ր՝
ո՛վ Զօրաբաբէլ , կ'ըսէ Տէրը . և
ո՛վ Յովսեդեկեան Յեսու մեծ քա-
հանայ՝ զօրացի՛ր . ու դուք՝ ո՛վ

Ն . Ք . ԴՔ . Իրր 520

ⁿ Գ Թագ . ԺԷ . 1 ։ Դ Թագ . Ը . 1 ։
ᵒ Եզր . Ե . 2 ։
ᵖ Մատ . ԻԸ . 20 ։ Հռով . Ը . 31 ։
ᵠ Տես Բ Մն . ԼԶ . 22 ։ Եզր . Ա . 1 ։
ʳ Գլ . Բ . 21 ։
ˢ Եզր . Ե . 2 , 8 ։

ᵃ Եզր . Գ . 12 ։
ᵇ Զաք . Դ . 10 ։
ᶜ Զաք . Ը . 9 ։

Ն. Ք. գ. Ք. ևրր 520

ա Ել. իթ. 45, 46։
բ Նեեմ. Թ. 20. Ես. կգ. 11։
գ Հգր 21։ Յովէլ. դ. 16։ Եբր. ժբ. 23։
դ Տես Յով. ա. 14։
ե Սաղ. ձե. 8, 9։ Ղուկ. բ. 14։ Եփես. բ. 14։
զ Ղևտ. ժ. 10, 11։ Բ Օր. լգ. 10։ Մաղ. բ. 7։
է Թուոց. ժթ. 11։
ը Տիտ. ա. 15։

երկրին բոլոր ժողովուրդը՝ զօրա-
ցէք, կ'ըսէ Տէրը. ու աշխատե-
ցէք. քանզի ես ձեզի հետ եմ.
5 կ'ըսէ զօրաց Տէրը, [ա]Ինչպէս որ
ձեր Եգիպտոսէն ելած ատենը ձեզի
հետ խօսք կապեցի. ու [բ]իմ Հոգիս
ձեր մէջը կը կենայ. մի՛ վախնաք։
6 Քանզի զօրաց Տէրը այսպէս կ'ըսէ.
[գ]Քիչ ատենէն ետքը նորէն երկին-
քը ու երկիրը, և ծովը, ու ցամա-
7 քը պիտի շարժեմ. Նաև ամէն ազ-
գերը պիտի շարժեմ, ու ամէն ազ-
գերուն ցանկալի բաները պիտի
գան. և աս տունը փառքով պիտի
լեցընեմ, կ'ըսէ զօրաց Տէրը։
8 Արծաթը իմս է, ու ոսկին իմս է,
9 կ'ըսէ զօրաց Տէրը. [դ]Աս վերջի
տանը փառքը՝ առջինէն մեծ պիտի
ըլլայ, կ'ըսէ զօրաց Տէրը, ու աս
տեղս [ե]խաղաղութիւն պիտի տամ,
կ'ըսէ զօրաց Տէրը։
10 Դարեհին երկրորդ տարին՝ ին-
ներորդ ամսուան քսանըչորսերորդ
օրը՝ Անգէ մարգարէին ձեռքովը Տէ-
11 րոջը խօսքը եղաւ, ըսելով. Զօ-
րաց Տէրը այսպէս կ'ըսէ. [զ]Հիմա
օրէնքին վրայով հարցմունք ըրէ
12 քահանաներուն, ու ըսէ. Թէ որ
մէկ մարդ մը իր հանդերձին քը-
ղանցքովը սուրբ միս վերցընէ, ու
քղանցքովը՝ հացի, կամ ապուրի,
կամ գինիի, կամ եղի, կամ ինչ
և իցէ կերակուրի դպչի, անիկայ
սուրբ կ'ըլլա՞յ։ Եւ քահանաները
պատասխան տուին, ու ըսին.
13 Ո՛չ։ Եւ Անգէ ըսաւ. Թէ որ
[է]մեռելէ պղծուած մը ասոնց մէկուն
դպչելու ըլլայ, կը պղծուի՞։ Ու
քահանաները պատասխան տուին,
14 ու ըսին. Կը պղծուի։ Եւ Անգէ
պատասխան տուաւ, ու ըսաւ.
[ը]Այսպէս է աս ժողովուրդը, և
այսպէս է աս ազգը իմ առջևս,
կ'ըսէ Տէրը, ու այսպէս է իրենց

Ն. Ք. գ. Ք. ևրր 520

ժ Գլ. ա. 5։
ի Գլ. ա. 6, 9։ Տես Զաք. ը. 10։
լ Գլ. ա. 11։
խ Բ Օր. իը. 22։ Գ Թագ. ը. 37։ Գլ. ա. 9։ Ամով. դ. 9։
ծ Երեմ. ե. 3։ Ամով. դ. 6, 8, 9, 10, 11։
կ Զաք. ը. 9։
հ Զաք. ը. 12։
ձ Գլ. ա. 14։
ղ Հգր 6, 7։ Եբր. ժբ. 26։
ճ Դան. բ. 44։ Մատթ. իդ. 7։
մ Միք. ե. 10։ Զաք. դ. 6։ Թ. 10։
յ Երգ. ը. 6։ Տես Երեմ. իբ. 24։
ն Ես. խբ. 1։ խգ. 10։

ձեռացը բոլոր գործքը ու ինչ որ
հոն ընծայ կը մատուցանեն պիղծ
15 է։ Ուրեմն հիմա աս օրէն առաջ
ետևը [ժ]մտածեցէք. երբոր դեռ
Տէրոջը տաճարին մէջ քար քարի
16 վրայ դրուած չէր. Որ ան ատենը
[ի]երբոր մէկը քսան կոտ ցորենի դէզին
քովը կ'երթար, տասը կոտ կը գտ-
նուէր. ու երբոր իր գինւոյ աւա-
զանին քովը կ'երթար՝ հնձանէն յի-
սուն մար հանելու, քսան մար կը
17 գտնուէր։ Ձեզ, ու [լ]ձեր ձեռա-
ցը բոլոր գործքը [խ]խորշակահարու-
թեամբ և դալուկով ու կարկու-
տով զարկի. [ծ]սակայն ինծի չդար-
18 ձաք, կ'ըսէ Տէրը։ Հիմա աս օրէն
առաջ ետևը մտածեցէք, [կ]Տէրոջը
տաճարին հիմնարկութեանը օրէն,
իններորդ ամսուան քսանըչորսերորդ
օրէն առաջ ետևը մտածեցէք։
19 [հ]Հունտը տակաւին ամբարին մէ՞ջն
է. և որթը ու թզենին և նռնենին
ու ձիթենին դեռ պտուղ չտուին.
աս օրէն 'ի վեր պիտի օրհնեմ։
20 Եւ Տէրոջը խօսքը երկրորդ ան-
գամ Անգէին եղաւ ամսուան քսան-
21 ուչորսերորդ օրը՝ ըսելով. [ձ]Յու-
դայի իշխանին՝ Զօրաբաբելին խօ-
սէ՛, ու ըսէ՛. [ղ]Ես երկինքը ու եր-
22 կիրը պիտի շարժեմ, Եւ [ճ]թագա-
ւորութեանց աթոռը տակնուվրայ
պիտի ընեմ, ու ազգաց թագաւո-
րութիւններուն զօրութիւնը պիտի
կորսնցընեմ, և [մ]կառքը, ու ա-
նոր հեծեալները տակնուվրայ պիտի
ընեմ. և ձիերը, ու անոնց հե-
ծեալները պիտի իյնան, ամէն մէ-
23 կը իր եղբօրը սրովը։ Ան օրը՝
կ'ըսէ զօրաց Տէրը, քեզ պիտի
առնեմ՝ ո՛վ Սաղաթիելեան Զօ-
րաբաբէլ՝ իմ ծառաս, կ'ըսէ Տէ-
րը. [յ]ու քեզ կնիքի պէս պիտի
դնեմ. [ն]քանզի քեզ ընտրեր եմ,
կ'ըսէ զօրաց Տէրը։

# ՄԱՐԳԱՐԷՈՒԹԻՒՆ ԶԱՔԱՐԻԱՅ

## ԳԼՈՒԽ Ա

1 Զաքարիա ապաշխարելու յորդորանք մը կ'ընէ ։ 7 Ձիերու տեսիլքը ։ 12 Հրեշտակին աղօթքովը բարեյաջող խոստմունքներ կ'ըլլայ Երուսաղեմին ։ 18 Չորս եղջիւրներու, ու չորս արուեստաւորներու տեսիլքը ։

1 ա Դարեհին երկրորդ տարին ութե-
րորդ ամիսը՝ Տէրոջը խօսքը
Ադդովի որդւոյն Բարաքիայի որ-
դւոյն բ Զաքարիա մարգարէին ե-
2 ղաւ, ըսելով. Տէրը ձեր հայրե-
3 րուն խիստ բարկացաւ ։ Ու ա-
նոնց ըսէս. Զօրաց Տէրը այսպէս
կ'ըսէ. գ Ինծի՛ դարձէք, կ'ըսէ զօ-
րաց Տէրը, ու ես ձեզի պիտի դառ-
4 նամ, կ'ըսէ զօրաց Տէրը ։ Ձեր
հայրերուն պէս մի՛ ըլլաք, դ որ
առջի մարգարէները անոնց կը կան-
չէին՝ ըսելով. Զօրաց Տէրը այս-
պէս կ'ըսէ, ե Ձեր չար ճամբանե-
րէն. ու չար գործքերէն դարձէ՛ք.
բայց անոնք մտիկ չըրին, ու ին-
ծի ականջ չտուին, կ'ըսէ Տէ-
5 րը ։ Ձեր հայրերը ո՞ւր են. ու
մարգարէները յաւիտեան կ'ապ-
6 րի՞ն ։ Սակայն զ իմ խօսքերս ու
հրամաններս որ իմ ծառաներուս
մարգարէներուն պատուիրեր էի,
ձեր հայրերուն չհասա՞ն. իսկ անոնք
դարձան ու ըսին, է Զօրաց Տէրը
ինչ որ մեզի ընելու որոշեր էր՝ մեր
ճամբաներուն ու գործքերուն հա-
մեմատ, զանիկայ մեր վրայ 'ի գործ
դրաւ ։
7 Դարեհին երկրորդ տարին՝ մե-
տասաներորդ ամսուն՝ այսինքն Սե-
բաթ ամսուն քսանըչորսերորդ օ-
րը՝ Տէրոջը խօսքը Ադդովի որդւոյն
Բարաքիայի որդւոյն Զաքարիա
8 մարգարէին եղաւ, ըսելով. Գի-
շերով տեսայ որ ը Հաձահ աշխէտ ձիի
վրայ հեծած մարդ մը ձորին մէջը
եղող մրտենիներուն մէջտեղը կը
կայնէր. ու անոր ետեւը՝ թ աշխէտ,
պիսակ ու ճերմակ ձիեր կային ։
9 Ու ըսի. Ասոնք ի՞նչ են՝ ո՛վ Տէր
իմ. ու ինծի հետ խօսող հրեշ-
տակը ինծի ըսաւ. Ասոնց ինչ
10 ըլլալը քեզի պիտի ցուցընեմ ։ Եւ
մրտենիներուն մէջը կայնող մարդը
պատասխան տուաւ, ու ըսաւ.

Ն. Ք. ԳՔ. Իրր 520

ա Եզր. Դ. 24 ։ Անգ. Ա. 1 ։
բ Եզր. Ե. 1 ։ Մատ. ԻԳ. 35 ։
գ Երեմ. ԻԵ. 5 ։ ԼԵ. 15 ։ Միք. Է. 19 ։ Մաղ. Գ. 7 ։ Ղու. ԺԵ. 20 ։ Յակ. Դ. 8 ։
դ Բ Մն. ԼԶ. 15. 16 ։
ե Ես. ԼԱ. 6 ։ Երեմ. Գ. 12 ։ ԺԸ. 11 ։ Եզեկ. ԺԸ. 30 ։ Ովս. ԺԴ. 1 ։
զ Ես. ԾԵ. 1 ։
է Ողբ. Ա. 18 ։ Բ. 17 ։

Իրր 519

ը Տես Յես. Ե. 13 ։ Յայտ. Զ. 4 ։
թ Գլ. Զ. 2-7 ։

ժ Ասոնք անոնք են, որ Տէրը խրկեց
11 երկիրը պտըտելու համար ։ Ու
մրտենիներուն մէջը կայնող ի Տէ-
րոջը հրեշտակին. պատասխան
տուին, ու ըսին. Երկիրը պտըտե-
ցանք, և ահա բոլոր երկիրը հանգըս-
12 տութեամբ կը նստի ։ Եւ Տէրոջը
հրեշտակը պատասխան տուաւ, ու
ըսաւ. լ Ո՛վ զօրաց Տէրը՝ մինչև
ե՞րբ չես ողորմիր Երուսաղեմին, ու
Յուդայի քաղաքներուն, որոնց
խ աս եօթանասուն տարին բարկա-
13 ցար ։ Եւ Տէրը ինծի հետ խօսող
հրեշտակին՝ ծ բարի խօսքերով, ու
մխիթարական խօսքերով պատաս-
14 խան տուաւ ։ Եւ ինծի հետ խօ-
սող հրեշտակը ինծի ըսաւ. Կանչէ՛
ու ըսէ՛. Զօրաց Տէրը այսպէս կ'ը-
սէ. կ Երուսաղեմի համար, ու Սիօ-
նի համար՝ մեծ նախանձով կը նա-
15 խանձիմ. Եւ հանգիստ եղող ազ-
գերուն խիստ շատ բարկացած եմ.
քանզի հ ես քիչ բարկացայ, ու ա-
16 նոնք չարիքը աւելցուցին ։ Անոր
համար Տէրը այսպէս կ'ըսէ. ձ Ե-
րուսաղեմին՝ ողորմութեամբ դար-
ձայ. իմ տունս անոր մէջ պիտի
շինուի, կ'ըսէ զօրաց Տէրը, ու
ղ Երուսաղեմի վրայ լար պիտի քա-
17 շուի ։ Դարձեալ կանչէ ու ըսէ՛.
Զօրաց Տէրը այսպէս կ'ըսէ. Իմ
քաղաքներս նորէն բարիքներով
պիտի յորդին, ճ և Տէրը նորէն
Սիօնը պիտի մխիթարէ ; ու մ նորէն
Երուսաղէմը պիտի ընտրէ ։
18 Եւ աչքերս վերցուցի ու նայեցայ.
19 և ահա չորս եղջիւր ։ Ու ինծի
հետ խօսող հրեշտակին ըսի. Ա-
սոնք ի՞նչ են. ու ինծի ըսաւ. Ա-
սոնք են այն եղջիւրները՝ որոնք
Յուդան, Իսրայէլը, ու Երուսաղէ-
20 մը ցրուեցին ։ Եւ Տէրը ինծի չորս
21 արուեստաւոր ցուցուց ։ Ու ըսի.
Ասոնք ի՞նչ ընելու կու գան. և
անիկայ խօսեցաւ, ու ըսաւ. Ա-
սոնք են այն եղջիւրները՝ որ Յու-
դան ցրուեցին, այնպէս որ մարդ
մը չկրցաւ իր գլուխը վերցընել.
ուստի ասոնք եկան, որ զանոնք
վախցընեն. ու Յուդայի երկրին
վրայ՝ զանիկայ ցրուելու համար

Ն. Ք. ԳՔ. Իրր 519

ժ Եբր. Ա. 14 ։
ի Սաղ. ՃԳ. 20. 21 ։
լ Սաղ. ՃԲ. 13 ։ Տես Յայտ. Զ. 10 ։
խ Երեմ. ԻԵ. 11. 12 ։ Դան. Թ. 2 ։ Գլ. Է. 5 ։
ծ Երեմ. ԻԹ. 10 ։
կ Յովէլ. Բ. 18 ։ Գլ. Ը. 2 ։
հ Ես. ԽԷ. 6 ։
ձ Ես. ԺԲ. 1 ։ ԾԴ. 8 ։ Գլ. Բ. 10 ։ Ը. 3 ։
ղ Գլ. Բ. 1. 2 ։
ճ Ես. ԾԱ. 3 ։
մ Ես. ԺԴ. 1 ։ Գլ. Բ. 12 ։ Գ. 2 ։

Ն · ք · ղք · իրր 519
յ Սաղ · ճե · 4 · 5 ·

519
⁻ Տես Եզեկ · խ · 3 ·
ᵇ Յայտ · ժա · 1 · իա · 15 · 16 ·
ᶜ Երեմ · լա · 27 · Եզեկ · լզ · 10 · 11 ·
ᵀ Ես · իզ · 1 · Գլ · Թ · 8 ·
ᵉ Ես · կ · 19 · Յայտ · իա · 23 ·
ᶻ Ես · խը · 20 · ծբ · 11 · Երեմ · ա · 14 · ծ · 8 · ծա · 6 · 45 ·
ᵉ բ Օր · իը · 64 · Եզեկ · ժէ · 21 ·
ᶻ Յայտ · ժը · 4 ·
ᴾ բ Օր · լբ · 10 · Սաղ · ժէ · Տ · բ Թես · ա · 6 ·
ᶻ Ես · ժա · 15 · ժԹ · 16 ·
ᵏ Գլ · դ · 9 ·
ᶫ Ես · ժբ · 6 · ծդ · 1 · Սոփ · գ · 14 ·
ᵉ Ղև · իզ · 12 · Եզեկ · լէ · 27 · Գլ · ը · 3 · Յովհ · ա · 14 · բ Կոր · զ · 16 ·
ᶻ Գլ · գ · 10 ·
ᵏ Ես · բ · 2 · 3 · խԹ · 22 · կ · 3 · [illegible] · Գլ · ը · 22 · 23 ·
ᶜ Եզեկ · լգ · 33 · Հմր 9 ·
ᵈ բ Օր · լբ · 9 ·
ᶻ Գլ · ա · 17 ·
ᶜ Ամբ · բ · 20 · Սոփ · ա · 7 ·
ᶠ բ Օր · իզ · 15 · Սաղ · կը 5 · Ես · ծէ · 15 · կգ · 15 ·

⁻ Անգ · ա · 1 ·

յեղջիւր վերցընող ազգերուն եղ-
ջիւրները վար ձգեն ։

## ԳԼ · Բ

1 Աստուած Երուսաղեմին խնամք ընելով, հրաման կ'ընէ որ զանիկայ չափեն ։ 6 Սիոնին փրկութիւնը ։ 10 Աստուծոյ ներկայութեանը խոստմունքը ։

1 Ու աչքերս վերցուցի, ու նայեցայ .
և ահա ⁻մէկ մարդ մը՝ որուն
ձեռքին մէջ չափելու չուան կար ։
2 Ու ըսի . Դուն ո՞ւր կ'երթաս . ու
ինծի ըսաւ . ᵇ Երուսաղէմը չափե-
լու , որ լայնութիւնը ո՛րչափ , ու
երկայնութիւնը ո՛րչափ ըլլալը տես-
3 նեմ ։ Եւ ահա ինծի հետ խօսող
հրեշտակը ելաւ , ու անոր դիմացը
4 ուրիշ հրեշտակ մը ելաւ . Ու անոր
ըսաւ . Վազէ՛ աս երիտասարդին
խօսէ՛ ու ըսէ . ᶜ Երուսաղէմը ա-
ռանց պարսպի պիտի բնակուի ,
մարդու ու անասունի բազմութեա-
նը համար , որ անոր մէջը պիտի ըլ-
5 լան ։ Եւ ես ᵀ անոր բոլորտիքը
հրեղէն պարիսպ պիտի ըլլամ , կ'ը-
սէ Տէրը . ᵉ ու անոր մէջը փառաց
համար պիտի ըլլամ ։
6 Աղէ՛ աղէ՛ , ᶻ հիւսիսի երկրէն
փախէ՛ք , կ'ըսէ Տէրը . քանզի ᵉ ձեզ
երկինքի չորս հովերուն պէս ցրուե-
7 ցի , կ'ըսէ Տէրը ։ ᶻ Աղէ՛ քեզ ա-
զատէ՛ , ո՛վ Սիոն , որ Բաբելոնի
8 աղջկանը հետ կը բնակիս ։ Քան-
զի զօրաց Տէրը այսպէս կ'ըսէ .
Փառաց ետևէն ղիս ձեզ կողոպտող
ազգերուն խրկեց . քանզի ᴾ ձեզի
դպչողը , իր աչքին բիբին կը դըպ-
9 չի ։ Վասն զի ահա ես ᶻ իմ ձեռքս
անոնց վրայ պիտի շարժեմ . ու ա-
նոնք իրենց ծառաներուն աւար
պիտի ըլլան . ու ᵏ պիտի գիտնաք
որ զօրաց Տէրը զիս խրկեր է ։
10 ᶫ Ցնծա՛ , և ուրախացի՛ր՝ ո՛վ Սիոնի
աղջիկ . քանզի ահա ես կու գամ ,
ու ᵉ քու մէջդ պիտի բնակիմ , կ'ը-
11 սէ Տէրը ։ Եւ ᶻ այն օրը ᵏ շատ ազ-
գեր Տէրոջը պիտի յարին , ու ին-
ծի ժողովուրդ պիտի ըլլան . և ես
քու մէջդ պիտի բնակիմ , ու ᶜ պի-
տի գիտնաս որ զօրաց Տէրը զիս
12 քեզի խրկեր է ։ Եւ Տէրը ᵈ իր բա-
ժինը Յուդան՝ սուրբ երկրին մէջ
ժառանգութիւն պիտի առնէ , ու
ᶻ նորէն Երուսաղէմը պիտի ընտրէ ։
13 ᶜ Տէրոջը առջևը լո՛ւռ կեցի՛ր՝ ո՛վ
բոլոր մարմին . քանզի անիկայ ᶠ իր
սուրբ բնակութենէն արթնցաւ ։

## ԳԼ · Գ

1 Յեսուին օրինակովը կը ցուցուի եկեղեցիին վերականգնումը ։ 8 Շառաւիղի օրինակով Քրիստոս կը խոստացուի ։

1 Ու Տէրը ինծի ցուցուց ⁻մեծ քա-
հանան Յեսուն , որ Տէրոջը հը-
րեշտակին առջևը կայներ էր . ու
ᵇ Սատանան անոր աջ կողմը կայ-
ներ էր՝ անոր դէմ դնելու համար ։
2 Եւ Տէրը Սատանային ըսաւ . ᶜ Տէրը
քեզ յանդիմանէ՛ ո՛վ Սատանայ ,
ու քեզ՝ ᵀ Երուսաղէմը ընտրող
Տէրը յանդիմանէ . ᵉ միթէ ասիկայ
կրակէ հանուած խանձող չէ՞ ։
3 Եւ Յեսու ᶻ աղտոտ հանդերձներ
հագեր էր , ու հրեշտակին առջևը
4 կը կայնէր ։ Եւ իր առջևը կայ-
նողներուն պատասխան տուաւ ,
ու խօսեցաւ ըսելով . Աղտոտ հան-
դերձները ատոր վրայէն հանեցէ՛ք .
և անոր ըսաւ . Նայէ՛ , քու ան-
օրէնութիւնդ վրայէդ վերցուցի ,
ᵉ ու քեզի պատուական զգեստներ
5 պիտի հագցնեմ ։ Ու ես ըսի՝ որ
ᶻ անոր գլուխը մաքուր խոյր դնեն .
և անոր գլուխը մաքուր խոյրը դը-
րին , ու անոր հանդերձներ հագ-
ցուցին . ու Տէրոջը հրեշտակը
կայներ էր ։
6 Եւ Տէրոջը հրեշտակը Յեսուին
7 վկայութիւն ըրաւ ու ըսաւ . Զօ-
րաց Տէրը այսպէս կ'ըսէ . Թէ որ
իմ ճամբաներուս մէջը քալես , ու
ᴾ իմ պահպանութիւնս պահես , ան
ատենը դուն ալ ᶻ իմ տունս պիտի
դատես , և իմ սրահներս ալ պիտի
պահես , ու քեզի աս ներկայ գըտ-
նուողներուն *մէջէն առաջնորդ-
8 ներ՛՛ պիտի տամ ։ Հիմա մտիկ
ըրէ՛ ո՛վ Յեսու մեծ քահանայ՝
դուն ու քու առջևդ նստող բա-
րեկամներդ . քանզի անոնք ᵏ նշան
ըլլալու մարդիկ են . վասն զի ահա
ես ᶫ իմ ծառաս ᵉ Շառաւիղը պի-
9 տի բերեմ ։ Քանզի ահա Յեսուին
առջևը դրած քարս . ᶻ այն մէկ քա-
րին վրայ ᵏ եօթը աչք պիտի ըլլայ .
ահա ես անոր փորագրութիւնը
պիտի փորագրեմ՝ կ'ըսէ զօրաց
Տէրը , և ᶜ այն երկրին անօրէնու-
թիւնը մէկ օրուան մէջ պիտի վեր-
10 ցընեմ ։ ᵈ Այն օրը՝ կ'ըսէ զօրաց
Տէրը՝ ձեզմէ ամէն մէկը իր դրացին
ᶻ որթի տակ , ու թզենիի տակ պի-
տի կանչէ ։

## ԳԼ · Դ

1 Ոսկի աշտանակին օրինակովը կը ցուցուի Զօրաբաբելին հիմնադրութեանը բարի յաջողութիւնը ։ 11 Երկու ձիթենիներով կը ցուցուի երկու օծեալները ։

1 Ու ⁻ինծի հետ խօսող հրեշտակը
դարձաւ , և զիս՝ ᵇ իր քունէն
արթնցող մարդու պէս արթըն-
2 ցուց ։ Ու ինծի ըսաւ . Ի՞նչ կը
տեսնես . ու ըսի . Կը տեսնեմ որ
ահա ᶜ բոլորովին ոսկիէ աշտանակ մը
կայ , ու անոր վրայ բաժակ մը , ᵀ և
անոր վրայ եօթը ճրագ , ու անոր

Ն · ք · ղք · 519
ᵇ Սաղ · ճԹ · 6 · Յայտ · ժբ · 10 ·
ᶜ Յուդ · 9 ·
ᵀ Գլ · ա · 17 · Հռով · ը · 33 ·
ᵉ Ամով · դ · 11 · Հռով · ժա · 5 · Յուդ · 23 ·
ᶻ Ես · կդ · 6 ·
ᵉ Ես · կա · 10 · Ղուկ · ժե · 22 · Յայտ · ժԹ · 8 ·
ᶻ Ել · իԹ · 6 · Գլ · զ · 11 ·
ᴾ Ղև · ը · 35 · գ Թագ · բ · 3 · Եզեկ · խդ · 16 ·
ᶻ բ Օր · ժէ · 9 · Մաղ · բ · 7 ·
* Կամ՝ մէջ ճեմելիքներ
ᵏ Ես · ը · 18 · ի · 3 ·
ᶫ Ես · խբ · 1 · խԹ · 3 · 5 · ծբ · 13 · ծգ · 11 · Եզեկ · լդ · 23 · 24 ·
ᵉ Ես · դ · 2 · ժա · 1 · Երեմ · իգ · 5 · լգ · 15 · Գլ · զ · 12 ·
ᶻ Սաղ · ճժը · 22 · Ես · իը · 16 ·
ᵏ Գլ · գ · 10 · Յայտ · ե · 6 ·
ᶜ Երեմ · լա · 34 · ծ · 20 · Միք · է · 18 · 19 · Գլ · ժգ · 1 ·
ᵈ Գլ · բ · 11 ·
ᶻ գ Թագ · դ · 25 · Ես · լզ · 16 · Միք · դ · 4 ·

⁻ Գլ · բ · 3 ·
ᵇ Դան · ը · 18 ·
ᶜ Ել · իե · 31 · Յայտ · ա · 12 ·
ᵀ Ել · իե · 37 · Տես Յայտ · դ · 5 ·

Ն. Ք. ՇԺԹ. 519

վրայի եօթը ճրագներուն համար՝
3 եօթը խողովակ կայ · [ե] Եւ անոր
քովը երկու ձիթենի կայ · մէկը
բաժակին աջ կողմէն , ու մէկալը
4 ձախ կողմէն ։ Եւ պատասխան
տուի , ու ինծի հետ խօսող հրեշ-
տակին խօսեցայ՝ ու ըսի · Ասոնք
5 ի՞նչ են , ո՛վ տէր իմ ։ Ու ինծի
հետ խօսող հրեշտակը պատասխան
տուաւ ու ինծի ըսաւ · Ասոնց ինչ
ըլլալը չե՞ս գիտեր · ու ես ըսի · Չէ ,
6 ո՛վ տէր իմ ։ Եւ պատասխան
տուաւ , ու ինծի խօսեցաւ՝ ըսելով ·
Աս է Տէրոջը խօսքը որ Զօրաբաբե-
լին կ'ըսուի · [զ] Զօրութեամբ չէ , և
ուժով չէ , հապա իմ Հոգւովս՝ կ'ը-
7 սէ զօրաց Տէրը ։ Դուն՝ [է] ո՛վ մեծ
լեռ , ո՞վ ես · Զօրաբաբելին առ-
ջեւը դաշտ պիտի ըլլաս · ու [ը] գլուխի
քարը ինքը պիտի հանէ · ու [թ] պի-
տի աղաղակեն · Շնո՛րհք՝ շնորհք
անոր ։
8 Դարձեալ Տէրոջը խօսքը ինծի
9 եղաւ , ըսելով · [ժ] Աս տունը Զօ-
րաբաբելին ձեռքերը հիմնեցին , և
անոր ձեռքերը [ի] պիտի կատարեն՝
զանիկայ · ու [լ] պիտի գիտնաս որ
[խ] զօրաց Տէրը զիս ձեզի խրկած է ։
10 Քանզի [ծ] պզտիկ բաներուն օրը ո՞վ
անարգեց · վասն զի ան եօթը ու-
ժերը ուրախութեամբ պիտի տես-
նեն գնտակը Զօրաբաբելին ձեռքին
մէջ · [կ] անոնք Տէրոջը աչքերն են ,
որ բոլոր երկրին մէջ կը պտըտին ։
11 Եւ ես պատասխան տուի , ու
անոր ըսի · Աշտանակին աջ կողմը ,
ու անոր ձախ կողմը եղող աս [հ] եր-
12 կու ձիթենիները ի՞նչ են ։ Ու
երկրորդ անգամ պատասխան տուի ,
ու անոր ըսի · Երկու ոսկի խողո-
վակներուն միջոցովը [ձ] իրենցմէ
ոսկիի պէս թափող երկու ձիթե-
13 նիի ոստերը ի՞նչ են ։ Եւ ինծի
խօսեցաւ ու ըսաւ · Ասոնց ինչ ըլ-
լալը չե՞ս գիտեր · ու ես ըսի · Չէ ,
14 ո՛վ տէր իմ ։ Ու ըսաւ · [ղ] Ասոնք
երկու *օծեալներն են , որ [ղ] բոլոր
երկրին Տէրոջը [ճ] առջեւը կը կայնին ։

ե Հմր 11, 12 ։ Յայտ. ժա. 4 ։
զ Ովս. ա. 7 ։
է Երեմ. ծա. 25 ։ Մատ. իա. 21 ։
ը Սաղ. ճժը. 22 ։
թ Տես Եզր. գ. 11, 13 ։
ժ Եզր. գ. 10 ։
ի Եզր. զ. 15 ։
լ Գլ. բ. 9, 11 ։ գ. 15 ։
խ Եզ. խբ. 16 ։ Գլ. բ. 8 ։
ծ Անգ. բ. 3 ։
կ Բ Մն. ժզ. 9 ։ Առակ. ժե. 3 ։ Տես Գլ. գ. 9 ։
հ Հմր 3 ։
ձ Յայտ. ժա. 4 ։
* Եբր. եղի որդիք
ղ Տես Յես. գ. 11, 13 ։ Գլ. զ. 5 ։
ճ Գլ. դ. 7 ։ Ղու. ա. 19 ։

## ԳԼ. Ե

1 Թռչող տոմսին միջոցովը կը ցուցուի գողերուն ու երդում ընողներուն ըլլալու անէծքը ։ 5 Արդուի մէջ ճնշուած կնկան տեսիլքը ։

1 Եւ դարձայ , ու աչքերս վերցընե-
լով տեսայ · և ահա թռչող
2 [ա] տոմս մը ։ Ու ինծի ըսաւ · Ի՞նչ
կը տեսնես · ու ըսի · Թռչող տոմս
մը կը տեսնեմ · երկայնութիւնը
քսան կանգուն , ու լայնութիւնը
3 տասը կանգուն է ։ Եւ ինծի ը-
սաւ · Ասիկայ՝ [բ] բոլոր երկրի երեսին
վրայ եղող անէծքն է · քանզի ամէն
գողութիւն ընողը՝ աս կողմէն գը-
րուածին համեմատ պիտի կտրուի ,
ու ամէն երդում ընողը՝ մէկալ
կողմէն գրուածին համեմատ պիտի
4 կտրուի ։ Զանիկայ ես կը հանեմ ,
կ'ըսէ զօրաց Տէրը , ու գողին տու-
նը , և իմ անունովս [գ] սուտ երդում
ընողին տունը պիտի մտնէ , ու ա-
նոր տանը մէջ պիտի մնայ · և [դ] զա-
նիկայ իր փայտերովը ու իր քարե-
րովը պիտի սպառէ ։
5 Եւ ինծի հետ խօսող հրեշտակը
ելաւ , ու ինծի ըսաւ · Հիմա աչ-
քերդ վերցուր , ու նայէ թէ աս
6 ելլողը ինչ է ։ Ու ես ըսի · Ի՞նչ
է · ու ըսաւ · Աս ելլողը արդուն է ·
ու ըսաւ · Բոլոր երկրի վրայ անոնց
7 նմանութիւնը ասիկայ է ։ Եւ ա-
հա կապարեայ տաղանդ մը վեր-
ցուեցաւ · ու կնիկ մը արդուին մէ-
8 ջը կը նստէր ։ Եւ ըսաւ · Աս է
Չարութիւնը · ու զանիկայ ար-
դուին մէջը ձգեց , և ան կապարեայ
կշիռքը ան արդուին բերանը ձգեց ։
9 Եւ աչքերս վերցուցի , ու տեսայ ·
և ահա երկու կնիկ ելաւ , ու հովը
անոնց թեւերուն մէջն էր · և անոնք
արագիլի թեւերու նման թեւեր ու-
նէին , ու ան արդուն երկրի ու
10 երկինքի մէջտեղը վերցուցին ։ Եւ
ինծի հետ խօսող հրեշտակին ըսի ·
11 Ասոնք ո՞ւր կը տանին արդուն ։ Եւ
անիկայ ինծի ըսաւ · Կը տանին որ
անոր [ե] տուն շինեն [զ] Սենաար երկ-
րին մէջ · ու պիտի հաստատուի ,
և հոն իր խարիսխին վրայ պիտի դը-
րուի ։

ա Եզեկ. բ. 9 ։
բ Մաղ. դ. 6 ։
Ն. Ք. ՇԺԹ. 519
գ Ղև. ժթ. 12 ։ Գլ. ը. 17 ։ Մաղ. գ. 5 ։
դ Տես Ղև. ժդ. 45 ։
ե Երեմ. իթ. 5, 28 ։
զ Ծն. ժ. 10 ։

## ԳԼ. Զ

1 Չորս կառքերուն տեսիլքը ։ 9 Յեսուին պսակներովը կը ցուցուի Շառաւիղ կոչուած Քրիստոսին տաճարը · ու թագաւորութիւնը ։

1 Եւ դարձայ , ու աչքերս վերցու-
ցի , ու տեսայ · և ահա երկու
լեռներու մէջէն չորս կառք կ'ել-
լէր , ու լեռները պղնձէ լեռներ
2 էին ։ Առջի կառքին՝ [ա] շիկնած
ձիեր լծուած էին , ու երկրորդ կառ-
3 քին՝ [բ] սեւ ձիեր , Ու երրորդ կառ-
քին՝ [գ] ճերմակ ձիեր , և չորրորդ
կառքին՝ պիսակ ու գորշագոյն
4 ձիեր ։ Եւ պատասխան տուի ,
[դ] ու ինծի հետ խօսող հրեշտակին
ըսի · Ասոնք ի՞նչ են , ո՛վ տէր
5 իմ ։ Եւ հրեշտակը պատասխան
տուաւ , ու ինծի ըսաւ · [ե] Ասոնք
երկինքի չորս հովերուն հոգիներն են ,
որ [զ] բոլոր երկրին Տէրոջը առջեւը
6 կայնելէն կ'ելլեն · Սեւ ձիերը՝ որ
ան կառքին լծուած են , հիւսիսի
երկիրը կ'ելլեն , ու ճերմակները
անոնց ետեւէն կ'ելլեն , ու պիսակ-
7 ները հարաւոյ երկիրը կ'ելլեն ։ Եւ
գորշագոյնները ելան , և ուզեցին

ա Գլ. ա. 8 ։ Յայտ. զ. 4 ։
բ Յայտ. զ. 5 ։
գ Յայտ. զ. 2 ։
դ Գլ. ե. 10 ։
ե Սաղ. ճդ. 4 ։ Եբր. ա. 7, 14 ։
զ Գ Թագ. իբ. 19 ։ Դան. է. 10 ։ Գլ. դ. 14 ։ Ղու. ա. 19 ։

Ն. Ք. ԳՃ.
519

[ա] Գլ. ա. 10։
[բ] Ել. իը. 36։ լթ. 6։ Ղև. ը. 9։ Գլ. գ. 5։
[գ] Տես Ղու. ա. 78։ Յով. ա. 45։
[դ] Գլ. գ. 8։
[ե] Գլ. գ. 9։ Մատ. ժզ. 18։ Եփե. բ. 20, 21, 22։ Եբր. գ. 3։
[զ] Սաղ. ճժ. 4։ Եբր. գ. 1։
[է] Ես. ժբ. 14։ Մար. ժգ. 9։
[ը] Ես. ծէ. 19։ կ. 10։ Եփե. բ. 13, 19։
[թ] Գլ. բ. 9։ դ. 9։

որ երթան, [ա] Երկրի վրայ պտը-
տին. և անիկայ ըսաւ. Գացէ՛ք,
երկրի վրայ պտըտեցէ՛ք. ու անոնք
8 երկրի վրայ պտըտեցան։ Եւ ա-
նիկայ ինծի աղաղակեց, ու ինծի
խօսեցաւ, ըսելով. Նայէ՛ հիւ-
սիսի երկիրը ելլողները՝ իմ հոգիս
հիւսիսային երկրին մէջը հանգչե-
ցուցին։
9 Դարձեալ Տէրոջը խօսքը ինծի
10 եղաւ, ըսելով. Գերութենէ դար-
ձողներէն՝ Հեղդայէն, Տուբիայէն,
ու Յեդայիայէն առ, ու նոյն օրը
գնա Բաբելոնէն եկող Սոփոնիայի
որդւոյն Յովսիայի տունը մտիր.
11 Արծաթ ու ոսկի առ, ու [բ] պսակ-
ներ շինէ, ու մեծ քահանային
Յովսեդեկեան Յեսուին գլուխը
12 դիր. Եւ անոր խօսէ ըսելով.
Զօրաց Տէրը կը խօսի ու այսպէս
կ՚ըսէ. Ահա՛ [գ] այն մարդը՝ որուն
անունը [դ] Շառաւիղ է. անիկայ
իր տեղէն պիտի բուսնի, [ե] ու Տէ-
13 րոջը տաճարը պիտի շինէ։ Անի-
կայ պիտի շինէ Տէրոջը տաճարը,
ու պատիւ պիտի ունենայ, և իր
աթոռին վրայ նստելով իշխանու-
թիւն պիտի վարէ. ու [զ] քահանայ
պիտի ըլլայ իր աթոռին վրայ. ու
երկուքին մէջը խաղաղութեան
խորհուրդ պիտի ըլլայ։
14 Եւ պսակները՝ Հելեմին, Տու-
բիային, ու Յեդայիային, և Սո-
փոնիայի որդւոյն Հենին պիտի
ըլլան՝ Տէրոջը տաճարին մէջ [է] յի-
15 շատակ ըլլալու համար։ Եւ [ը] հե-
ռուն եղողները պիտի գան, ու
Տէրոջը տաճարին մէջ պիտի շի-
նեն. և [թ] պիտի գիտնաք որ զօ-
րաց Տէրը զիս ձեզի խրկեր է. ու
ասիկայ պիտի ըլլայ, թէ որ ու-
շադրութեամբ ձեր Տէր Աստու-
ծոյն ձայնին մտիկ ընէք։

## ԳԼ. Է

*1 Գերիները ծոմ պահելու վրայով կը հարցընեն։ 4 Զաքարիա կը յանդիմանէ անոնց ծոմապահութիւնը, 8 ցուցնելով թէ իրենց գերութեանը պատճառը մեղքն է։*

518

[ա] Գ Թագ. ժգ. 12։ Գլ. ը. 21։
[բ] Բ Օր. ժէ. 9, 10, 11։ լգ. 10։ Մաղ. բ. 7։
[գ] Երեմ. ծբ. 12։ Գլ. ը. 19։

1 Ու եղաւ որ Դարեհ թագաւորին
չորրորդ տարին՝ իններորդ ամ-
սուն՝ այսինքն Քասղեւին չորրորդ
օրը՝ Տէրոջը խօսքը Զաքարիային
2 եղաւ, Երբոր Սարասար, ու Ռէ-
կեմմելէք, և անոնց մարդիկները
Աստուծոյ տունը խրկուեցան, որ
3 [ա] Տէրոջը առջևը աղօթք ընեն, Ու
զօրաց Տէրոջը տանը մէջ եղող
[բ] քահանաներուն ու մարգարէնե-
րուն խօսին՝ ու ըսեն. Արդեօք
[գ] հինգերորդ ամսուն մէջ իմ անձս
զատելով լամ, ինչպէս որ այսչափ
4 տարիներ ըրի։ Ան ատենը զօրաց
Տէրոջը խօսքը ինծի եղաւ՝ ըսե-
5 լով. Ըս երկրիս բոլոր ժողովուր-
դին, ու քահանաներուն խօսէ ու
ըսէ. [դ] Աս եօթանասուն տարին՝
երբոր հինգերորդ [ե] ու եօթներորդ
ամիսներուն մէջ [զ] ծոմապահութիւն
կ՚ընէիք, ու սուգ կը բռնէիք, մի-
թէ [է] ինծի՞ համար ծոմապահու-
6 թիւն կ՚ընէիք։ Ու երբոր կ՚ու-
տէիք ու կը խմէիք, ձեզի համար
չէի՞ք ուտեր, ու ձեզի համար չէի՞ք
7 խմեր։ Ասոնք չե՞ն այն խօսքերը,
որ Տէրը առջի մարգարէներուն
ձեռքովը հրատարակեց, երբոր Ե-
րուսաղէմը ու անոր շրջակայ քա-
ղաքները բնակուած ու հանգիստ
էին, և [ը] հարաւային ու դաշտային
կողմերը բնակուած էին։
8 Դարձեալ Տէրոջը խօսքը Զա-
9 քարիային եղաւ, ըսելով. Զօրաց
Տէրը այսպէս խօսեցաւ, ու ըսաւ.
[թ] Արդար դատաստան տեսէք, և
ձեզմէ ամէն մէկը իր եղբօրը ողոր-
10 մութիւն ու գթութիւն ընէ. Եւ
[ժ] որբևայրին ու որբը, օտարականը
և տնանկը մի՛ հարստահարէք, [ի] ու
բնաւ մէկը իր եղբօրը համար իր
սրտին մէջ չարութիւն չմտածէ.
11 Բայց անոնք չուզեցին մտիկ ը-
նել. հապա [լ] իրենց ուսը ետ քա-
շեցին, և [խ] ականջնին ծանրացու-
12 ցին, որ չլսեն. Ու իրենց [ծ] սիրտը
անդամանդի պէս ըրին, [կ] որ չլսեն
այն օրէնքը ու այն խօսքերը, որ
զօրաց Տէրը իր Հոգւովը առջի
մարգարէներուն ձեռքովը անոնց
խրկեց. [հ] անոր համար զօրաց Տէ-
րոջը կողմանէ մեծ բարկութիւն ե-
13 ղաւ։ Ու եղաւ որ՝ ինչպէս որ
անիկայ կանչեց, ու անոնք մտիկ
չըրին, այնպէս ալ [ձ] անոնք կանչե-
ցին, ու ես մտիկ չըրի՝ կ՚ըսէ զօ-
14 րաց Տէրը. Հապա զանոնք [ղ] իրենց
չգիտցած [ճ] բոլոր ազգերուն մէջը փո-
թորիկով ցրուեցի. և [մ] անոնց ե-
տևէն երկիրը՝ անցնողէ ու դարձողէ
ամայի մնաց. այսպէս [յ] ցանկալի
երկիրը ամայի ըրին։

Ն. Ք. ԳՃ.
518

[դ] Գլ. ա. 12։
[ե] Երեմ. խա. 1։ Գլ. ը. 19։
[զ] Ես. ծը. 5։
[է] Տես Հռով. ժդ. 6։
[ը] Երեմ. ժէ. 26։
[թ] Ես. ծը. 6, 7։ Երեմ. է. 23։ Միք. զ. 8։ Գլ. ը. 16։ Մատ. իգ. 23։
[ժ] Ել. իբ. 21, 22։ Բ Օր. իդ. 17։ Ես. ա. 17։ Տես Երեմ. ե. 28։
[ի] Սաղ. լզ. 4։ Միք. բ. 1։ Գլ. ը. 17։
[լ] Նէեմ. թ. 29։ Երեմ. է. 24։ Ովս. դ. 16։
[խ] Տես Գործ. է. 56։
[ծ] Եզեկ. ժա. 19։ լզ. 26։
[կ] Նէեմ. թ. 29, 30։
[հ] Բ Մն. լզ. 16։ Դան. թ. 11։
[ձ] Առակ. ա. 24—28։ Ես. ա. 15։ Երեմ. ժա. 11։ ժդ. 12։ Միք. գ. 4։
[ղ] Բ Օր. իը. 33։
[ճ] Բ Օր. դ. 27։ իը. 64։ Եզեկ. լզ. 19։ Գլ. բ. 6։
[մ] Ղև. իզ. 22։
[յ] Տես Դան. ը. 9։

## ԳԼ. Ը

*1 Երուսաղէմին վերականգնումը։ 9 Ժողովուրդը Աստուծմէ ընդունելու շնորհքներովը կը յորդորուի շինութեան գործը յառաջ տանելու։ 16 Անոնցմէ բարեգործութիւն կը պահանջուի։ 18 Ուրախութիւն և անդորրութիւն կը խոստացուի անոնց։*

1 Դարձեալ զօրաց Տէրոջը խօսքը
2 ինծի եղաւ, ըսելով. Զօրաց
Տէրը այսպէս կ՚ըսէ. [ա] Սիոնի հա-
մար խիստ մեծ նախանձով նախան-
ձեցայ, ու անոր համար մեծ սրտ-
3 մտութիւնով նախանձեցայ։ Տէ-
րը այսպէս կ՚ըսէ. [բ] Սիոնին դարձած
եմ, ու [գ] Երուսաղէմի մէջ պիտի

[ա] Նաւ. ա. 2։ Գլ. ա. 14։
[բ] Գլ. ա. 16։
[գ] Գլ. բ. 10։

Ն. Ք. ԳՔ. 518

դ Եսա. ա. 21. 26 ։ ե Եսա. բ. 2. 3 ։ զ Երեմ. լա. 23 ։ է Տես Թագ. բ. 31 ։ Եսա. կե. 20. 22 ։

բնակիմ, ու Երուսաղէմը՝ ճշմարտութեան քաղաք, եւ զօրաց Տէրոջը լեռը՝ Սուրբ լեռ պիտի կոչուի։

4 Զօրաց Տէրը այսպէս կ՚ըսէ. Երուսաղէմի հրապարակներուն մէջ տակաւին ծեր մարդիկներ ու պառաւ կնիկներ պիտի նստին, որ օրերու շատութենէն ամէն մէկուն
5 ձեռքը ցուպ պիտի ըլլայ. Եւ քաղաքին հրապարակները՝ տղաքներով ու աղջիկներով պիտի լեցուին, որոնք անոր հրապարակներուն մէջը պիտի խաղան։

6 Զօրաց Տէրը այսպէս կ՚ըսէ. Թէեւ որ այն օրերը՝ այս ժողովուրդին մնացորդին աչքին դժուար երեւնայ, միթէ իմ աչքերուս ալ դժուար պիտի երեւնայ, կ՚ըսէ զօրաց Տէրը։

7 Զօրաց Տէրը այսպէս կ՚ըսէ. Ահա իմ ժողովուրդս արեւելեան երկրէն, ու արեւմտեան երկրէն պի-
8 տի փրկեմ. Եւ զանոնք պիտի բերեմ, ու Երուսաղէմի մէջ պիտի բնակին. Եւ անոնք ինծի ժողովուրդ պիտի ըլլան. Ես ալ ճշմարտութեամբ եւ արդարութեամբ անոնց Աստուած պիտի ըլլամ։

9 Զօրաց Տէրը այսպէս կ՚ըսէ. Ձեր ձեռքերը թող զօրանան, ով դուք որ այս օրերս կը լսէք այս խօսքերը անոր մարգարէներուն բերնէն, որոնք զօրաց Տէրոջը տանը հիմնարկութեան՝ ու տաճարին նո-
10 րոգութեան օրը խօսեցան։ Քանզի այն օրերէն առաջ՝ մարդու համար վարձք չկար, ու անասունի համար վարձք չկար. եւ նեղութեան պատճառաւ՝ ելլողին ու մտնողին խաղաղութիւն չկար. քանզի ես ամէն մարդը իր ընկերին դէմ ոտք հաներ
11 էի։ Բայց հիմա այս ժողովրդեանս մնացորդին առջի օրերուն պէս պիտի չըլլամ, կ՚ըսէ զօրաց Տէրը։
12 Քանզի հունտը խաղաղութիւն պիտի գտնէ. որթը իր պտուղը պիտի տայ, ու երկիրը իր բերքը պիտի տայ, ու երկինքը իր ցօղը պիտի տայ. եւ այս ամէն բաները այս ժողովրդեանս մնացորդին ժառանգել
13 պիտի տամ։ Ու պիտի ըլլայ որ՝ ինչպէս որ դուք ազգերու մէջ անէծք եղաք, ով Յուդայի տունը ու Իսրայէլի տունը, այնպէս ալ ձեզ պիտի ազատեմ, ու օրհնութիւն պիտի ըլլաք. մի՛ վախնաք, ձեր ձեռքերը թող զօրանան։
14 Քանզի զօրաց Տէրը այսպէս կ՚ըսէ. Ինչպէս որ ձեզի չարիք ընելու դիտաւորութիւն ըրի, երբոր ձեր հայրերը զիս սրդողցուցին, կ՚ըսէ
15 զօրաց Տէրը, ու չզղջացի, Այն-

ը Ծն. ժը. 14 ։ Ղուկ. ա. 37 ։ ժը. 27 ։ Հռովմ. դ. 21 ։
թ Եսա. ժա. 11. 12 ։ Խղ. 5. 6 ։ Եզեկ. լէ. 21 ։ Ամով. թ. 14. 15 ։
ժ Երեմ. լ. 22 ։ լա. 1. 33 ։ Գլ. ժգ. 9 ։
ի Երեմ. դ. 2 ։
լ Անգ. բ. 4 ։
խ Եզր. ե. 1. 2 ։
ծ Անգ. բ. 18 ։
կ Անգ. ա. 6. 9. 10 ։ բ. 16 ։
հ Բ Մն. ժե. 5 ։
ձ Ովս. բ. 21. 22 ։ Յովէլ. բ. 22 ։ Անգ. բ. 19 ։
ղ Սաղ. կէ. 6 ։
ճ Տես Անգ. ա. 10 ։
մ Երեմ. իբ. 18 ։
յ Ծն. ժբ. 2 ։ Հռովմ. դ. 11. 12 ։ Եսա. ժթ. 24. 25 ։ Սոփ. գ. 20 ։
ն Հմր 9 ։
շ Երեմ. լա. 28 ։
ո Բ Մն. լզ. 16 ։ Գլ. ա. 6 ։

պէս ալ դարձայ, ու այս օրերը Երուսաղէմին, ու Յուդայի տանը բարիք ընելու դիտաւորութիւն ը-
16 րի. մի՛ վախնաք։ Ձեր ընելու բաները ասոնք են. Ճշմարտութիւն խօսեցէք՝ ամէն մէկերնիդ իր ընկերին հետ. ձեր դռներուն մէջ արդարութեամբ եւ խաղաղու-
17 թեամբ դատաստան տեսէք. Ու ձեզմէ մէկը իր սրտին մէջ իր ընկերին համար չարութիւն չմտածէ. եւ Սուտ երդումը մի՛ սիրէք. վասն զի ես այս բոլոր բաները կ՚ատեմ, կ՚ըսէ Տէրը։
18 Դարձեալ զօրաց Տէրոջը խօսքը
19 ինծի եղաւ, ըսելով. Զօրաց Տէրը այսպէս կ՚ըսէ. Չորրորդ ամսուան ծոմը, ու հինգերորդին ծոմը, ու եօթներորդին ծոմը, եւ տասներորդին ծոմը՝ Յուդայի տանը ցնծութիւն եւ ուրախութիւն, ու խնդալից տօներ պիտի ըլլան. ուստի ճշմարտութիւնը ու խաղաղութիւնը սիրեցէք։
20 Զօրաց Տէրը այսպէս կ՚ըսէ. Նորէն ժողովուրդներ, ու շատ քաղաքներու բնակիչներ պիտի գան.
21 Ու մէկուն բնակիչները մէկալին պիտի երթան, ու ըսեն. Եկէք Տէրոջը առջեւը աղօթք ընելու, եւ զօրաց Տէրը փնտռելու երթանք.
22 Ես ալ պիտի երթամ։ Ու շատ ժողովուրդներ, եւ զօրաւոր ազգեր Երուսաղէմի մէջ զօրաց Տէրը փնտռելու, ու Տէրոջը առջեւը ա-
23 ղօթք ընելու պիտի գան։ Զօրաց Տէրը այսպէս կ՚ըսէ. Այն օրերը՝ ազգերուն ամէն լեզուներէն տասը մարդ՝ մէկուն քղանցքը պիտի բռնեն, այսինքն՝ Հրեայ եղող մարդուն քղանցքը պիտի բռնեն, ու ըսեն. Ձեզի հետ երթանք. քանզի լսեցինք որ Աստուած ձեզի հետ է։

չ Գլ. ե. 9 ։ Հմր 19 ։ Եփես. դ. 25 ։
պ Առակ. գ. 29 ։ Գլ. է. 10 ։
ջ Գլ. ե. 3. 4 ։
ռ Երեմ. ծբ. 6. 7 ։
ս Երեմ. ծբ. 12. 13 ։ Գլ. է. 3. 5 ։
վ Դ Թագ. իե. 25 ։ Երեմ. խա. 1. 2 ։
տ Երեմ. ծբ. 4 ։
ր Եսթ. ը. 17 ։ Եսա. լե. 10 ։
ց Հմր 16 ։
ւ Եսա. բ. 3 ։ Միք. դ. 1. 2 ։
փ Եսա. կ. 3 ։ Ճ ։ իգ. 23 ։
ք Եսա. գ. 6 ։ դ. 1 ։
օ Ա Կոր. ժդ. 25 ։

## ԳԼ. Թ

1 Աստուած իր եկեղեցին կը պաշտպանէ։ 9 Սիոնը կը յորդորուի որ Քրիստոսի գալստեանը, ու անոր խաղաղարար թագաւորութեանը վրայով ուրախանայ։ 12 Աստուծոյ խոստմունքները՝ յաղթութիւն տալու եւ պաշտպանութիւն ընելու վրայով։

իբր 587

1 Ադրաքի երկրին դէմ Տէրոջը խօսքին պատգամն է, ու Դամասկոսի վրայ պիտի հանգչի. (քանզի Տէրոջը աչքը մարդու, ու Իսրայէլի բոլոր ցեղերուն վը-
2 րայ է.) Ու Եմաթն ալ անոր սահմանակից է, նաեւ Տիւրոսը ու Սիդոնը՝ թէեւ շատ իմաստուն են։
3 Եւ Տիւրոս իրեն ամրոց շինեց, ու արծաթը՝ հողի պէս, եւ զուտ ոսկին՝ փողոցներու ցեխի պէս դի-
4 զեց։ Ահա Տէրը զանիկայ պիտի քշէ, եւ ծովուն մէջ անոր ուժե-

ա Ամով. ա. 3 ։
բ Երեմ. խթ. 23 ։
գ Եսա. իդ ։ Եզեկ. իզ. իէ. իը ։ Ամով. ա. 9 ։
դ Եզեկ. իը. 21 ։
ե Եզեկ. իը. 3. Ճ ։
զ Յոբ. իէ. 16 ։ Եզեկ. իը. 4. 5 ։
է Եսա. իգ. 1 ։
ը Եզեկ. իզ. 17 ։

ցած զօրութիւնը պիտի զարնէ. ու
անիկայ կրակով պիտի սպառի ։
5 Ասկաղոնը պիտի տեսնէ, ու
պիտի վախնայ. Գազան ալ, ու
մեծապէս պիտի տրտմայ ։ Ակ-
կարոնն ալ. քանզի իր յոյսը *ամօ-
թապ պիտի ըլլայ". եւ Գազայէն թա-
գաւորը պիտի կորսուի. ու Ասկա-
6 ղոնը պիտի չբնակուի ։ Եւ Ազով-
տոսի մէջ †օտարազգի պիտի բնա-
կի. ու Փղշտացւոց հպարտութիւ-
7 նը պիտի ջնջեմ ։ Եւ անոնց արիւնը
իրենց բերնէն, ու անոնց պղծու-
թիւնները իրենց ակռաներուն մէ-
ջէն պիտի վերցնեմ. ու մնացորդը
անիկայ ալ մեր Աստուծոյն պիտի
ըլլայ, եւ Յուդայի մէջ հազարա-
պետի պէս, ու Ակկարոնը Յեբու-
սացիին պէս պիտի ըլլայ ։
8 Եւ անցնող ու դարձող զօրքին
պատճառաւը իմ տանս բոլորտի-
քը պիտի բանակիմ, ու նեղիչն
ալ անոնց մէջէն բնաւ որ պիտի
չանցնի. քանզի հիմա իմ աչքե-
րովս տեսայ ։
9 Մեծապէս ուրախացիր, ով
Սիօնի աղջիկ. ցնծութեամբ աղա-
ղակէ, ով Երուսաղէմի աղջիկ.
ահա քու Թագաւորդ քեզի կու
գայ. անիկայ արդար ու փրկիչ
է. հեզ է, ու իշու վրայ հեծած,
10 եւ իշու ձագի աւանակի վրայ ։ Ու
Եփրեմէն կառքը, ու Երուսաղէ-
մէն ձին պիտի ջնջեմ. ու պատե-
րազմին աղեղը պիտի կոտրի. եւ ա-
նիկայ ազգերուն խաղաղութիւն
պիտի խօսի. ու անոր իշխանու-
թիւնը ծովէն մինչեւ ծովը, ու
գետէն մինչեւ երկրի ծայրերը պիտի
11 ըլլայ ։ Եւ քեզի ալ քու ուխ-
տիդ արիւնովը քու գերիներդ
ջուր չունեցող ջուրէն հանեցի ։
12 Ամրոցը դարձէք՝ ով յուսոյ գե-
րիներ. ես այսօր ալ կը ծանուցա-
նեմ, որ քեզի կրկնապատիկ հա-
13 տուցում պիտի ընեմ. Վասն զի
Յուդան ինծի համար աղեղի պէս
պիտի լարեմ, ու Եփրեմը ‡նետի
պէս պիտի դնեմ" եւ քու որդիքդ ով
Սիօն, Յունաց որդւոցը վրայ պի-
տի յարուցանեմ, ու քեզ զօրա-
ւորին սուրին պէս պիտի ընեմ ։
14 Եւ Տէրը անոնց վրայ պիտի երե-
նայ. ու անոր նետը փայլակի
պէս պիտի ելլէ, եւ Տէր Եհովան
փող պիտի հնչեցնէ, ու հա-
րաւային մրրիկներով պիտի քա-
15 լէ ։ Զօրաց Տէրը զանոնք պիտի
պաշտպանէ. եւ անոնք բնաջինջ
պիտի ընեն, ու ‖պարսաքարերու
վրայ" պիտի կոխեն, եւ պիտի խմեն
ու գինովի պէս պիտի աղաղակեն.
ու անոնք տաշտի պէս՝ սեղանին
անկիւններուն պէս պիտի լեցուին ։
16 Եւ այն օրը՝ անոնց Տէր Աստուածը
զանոնք իր ժողովրդեանը հօտին
պէս պիտի փրկէ. քանզի անոնք
երկրի վրայ թագի քարերու պէս
17 պիտի բարձրանան ։ Քանզի անոր
բարութիւնը, ու գեղեցկութիւնը
ինչ մեծ է. Ցորենը երիտասարդ-
ները, ու քաղցուն՝ կոյսերը պիտի
մեծցընէ ։

## ԳԼ. Ժ.

1 Մարգարէն կը պատուիրէ զԱստուծմէ խնդրել եւ ոչ թէ կուռքերէ, 5 ցուցնելով թէ ինչպէս որ մեղաց համար իր ժողովուրդը պատժեց, այնպէս ալ զանոնք պիտի փրկէ, ու իրենց առջի վիճակին պիտի դարձնէ ։

1 Ատոր անձրեւին ժամանակը Տէ-
րոջմէ անձրեւ խնդրեցէք. Տէ-
րը փայլակներ պիտի ընէ, եւ ա-
նոնց առատ անձրեւ պիտի տայ,
ամէն մէկուն արտերին խոտը ։
2 Քանզի թերափիմները ունայ-
նութիւն խօսեցան, ու գուշակու-
թիւն ընողները ստութիւն տեսան,
եւ սուտ երազներ զրուցեցին. պա-
րապ մխիթարութիւն տուին. ա-
նոր համար հօտերու պէս չուեցին.
հովիւ չըլլալուն համար տառապե-
3 ցան ։ Հովիւներուն վրայ իմ
բարկութիւնս բորբոքեցաւ, ու նո-
խազներուն այցելութիւն պիտի ը-
նեմ. քանզի զօրաց Տէրը իր հօ-
տին՝ Յուդայի տանը այցելութիւն
ըրաւ. եւ զանոնք՝ իր պատերազմի
մէջ փառաւոր ձիուն պէս պի-
4 տի ընէ ։ §Անկիւնը անկէ՝ ցիցը
անկէ" պատերազմի աղեղը անկէ՝
ամէն զօրապետ մէկտեղ անկէ պի-
5 տի ելլէ. Ու անոնք զօրաւորներու
պէս պիտի ըլլան, որ պատերազմի
մէջ թշնամիները փողոցներուն ցեխին
մէջը կը կոխեն. ու անոնք պատե-
րազմ պիտի ընեն. քանզի Տէրը ա-
նոնց հետ է. ու ձիերու վրայ հեծ-
6 նողները պիտի ամչնան ։ Եւ Յու-
դայի տունը պիտի զօրացնեմ, ու
Յովսէփի տունը պիտի փրկեմ, եւ
զանոնք նորէն պիտի բնակեցնեմ,
քանզի անոնց ողորմեցայ. ու ա-
նոնք այնպէս պիտի ըլլան, որպէս
թէ զանոնք երբեք ձգած չէի.
քանզի անոնց Տէր Աստուածը ես
7 եմ, ու անոնց պիտի լսեմ ։ Ու
Եփրեմը զօրաւորի պէս պիտի ըլլայ,
եւ անոնց սիրտը ուրախ պիտի ըլ-
լայ՝ իբր թէ գինիով. անոնց որ-
դիքներն ալ պիտի տեսնեն, ու
պիտի ուրախանան. անոնց սիրտը
8 Տէրոջմով պիտի ցնծայ ։ Անոնց
պիտի սուլեմ, ու զանոնք պիտի
ժողվեմ. Քանզի զանոնք փրկեցի.
ու անոնք պիտի շատնան, ինչպէս
9 որ շատ էին ։ Թէեւ զանոնք ժողո-

Ն. Ք. Գ. Ք. Իբր 587

ԲՕր. Լ. 1։
Ես. ԺԱ. 11, 16։ Ովս. ԺԱ. 11։
Ես. ԽԹ. 20։
Ես. ԺԱ. 15, 16։
Կամ՝ նեղութեամբ
Ես. ԺԴ. 25։
Եզեկ. Լ. 13։
Միք. Դ. 5։

վուրդներու մէջ ցանեմ, սակայն
հեռաւոր տեղուանք զիս պիտի
յիշեն, և իրենց որդւոցը հետ պի-
տի ապրին, ու ետ պիտի դառնան։
10 Եւ զանոնք Եգիպտոսի երկրէն
պիտի դարձընեմ, ու զանոնք Ա-
սորեստանէն պիտի ժողվեմ, և զա-
նոնք Գաղաադու երկիրը, ու Լի-
բանանը պիտի բերեմ. ու անոնց
համար բաւական տեղ պիտի չգըտ-
11 նուի։ Եւ ծովէն նեղութիւն
պիտի անցնի, ու ծովուն ալիքները
պիտի զարնէ. ու գետին բոլոր խո-
րութիւնները պիտի ցամքին, և
Ասորեստանին հպարտութիւնը
պիտի իջնէ, ու Եգիպտոսին գա-
12 ւազանը պիտի վերցուի։ Եւ զա-
նոնք Տէրոջմով պիտի զօրացընեմ,
ու Անոր անունովը պիտի պտը-
տին, կ'ըսէ Տէրը։

## ԳԼ. ԺԱ

1 Երուսաղէմի կործանումը։ 3 Աստուած կը խնայէ ընտրեալներուն, ու մնացածները կը մերժէ։ 10 Քրիստոսի մերժուելովը՝ Գեղեցկութեան և Կապերու գաւազանները կը կոտրուին։ 15 Յիմար հովիւին օրինակը ու անէծքը։

Ես. ԼԸ. 19։
Եբր. ԻՁա.
Հմր 7։
Երեմ. Բ. 3. Ե. 7։
ԲՕր. ԻԹ. 19։ Ովս. ԺԲ. 9։
Հմր 4։
Սոփ. Գ. 12։ Մատ. ԺԱ. 5։
Ովս. Ե. 7։

1 Դուռներդ բաց, ով Լիբանան, ու
կրակը քու եղեւիններդ ուտէ։
2 Մայր ծառը թող ողբայ, քանզի
եղեւինը ինկաւ. վասն զի ազնուա-
կանները կողոպտուեցան. Բասա-
նու կաղնիները թող ողբան, քան-
զի անմատչելի անտառը կտրուե-
3 ցաւ։ Հովիւներուն ողբալուն
ձայնը կը լսուի. քանզի անոնց
փառքը յափշտակուեցաւ. առոյգ
առիւծներու մռնչելուն ձայնը կը
լսուի. քանզի Յորդանանու շքե-
ղութիւնը յափշտակուեցաւ։
4 Իմ Տէր Աստուածս այսպէս կ'ը-
սէ. Մորթուելու ոչխարները ա-
5 րածէ. Զանոնք՝ որ ծախու առ-
նողները կը մորթեն, ու յանցա-
ւոր չեն սեպուիր. և զանոնք ծա-
խողները կ'ըսեն. Տէրը օրհնեալ
ըլլայ, որ հարստացայ. ու անոնց
հովիւները անոնց վրայ գութ չու-
6 նին։ Քանզի ես մէյմըն ալ երկրի
բնակիչներուն պիտի չգթամ, կ'ը-
սէ Տէրը. մանաւանդ՝ ահա ես ա-
մէն մարդը իր ընկերին ձեռքը, ու
իր թագաւորին ձեռքը պիտի մատ-
նեմ. ու երկիրը պիտի զարնեն.
և անոնց ձեռքէն պիտի չփրկեմ։
7 Ու մորթուելու ոչխարները՝ այո
հօտին խեղճերը արածեցի։ Ու
ինծի երկու գաւազան առի, մէ-
կուն անունը՝ Գեղեցկութիւն, ու
մէկալին անունը՝ Կապեր դրի, և
8 ոչխարները արածեցի։ Ու մէկ
ամսուան մէջ իրեք հովիւ կոտրե-
ցի. քանզի հոգիս անոնց նեղա-
ցաւ. և անոնց հոգին ալ ինծմէ
9 զզուեցաւ։ Ու ըսի. Ձեզ պիտի
չհովուեմ, մեռնողը թող մեռ-
նի, ու կոտրուողը թող կոտրուի,
և մնացածները թող իրարու միս
10 ուտեն։ Ու Գեղեցկութիւն ըսուած
գաւազանս առի, և զանի-
կայ կոտրեցի, որ բոլոր ժողո-
վուրդներուն հետ ըրած ուխտս
11 աւրեմ. Ու նոյն օրը աւրեցաւ.
և ինծի սպասող հօտին խեղճերը
հաստատ գիտցան որ ասիկայ Տէ-
րոջը խօսքն է։
12 Ու անոնց ըսի. Թէ որ ձեր
աչքերուն հաճոյ կ'երեւնայ, իմ
վարձքս տուէք, ապա թէ ոչ՝
զանց ըրէք. ու իմ վարձքիս հա-
մար երեսուն արծաթ կշռեցին։
13 Եւ Տէրը ինծի ըսաւ. Զանիկայ
բրուտին նետէ. ասիկայ վայե-
լուչ գին մըն է, որ անոնք ինծի
համար կտրեցին. ու երեսուն ար-
ծաթը առի, և զանիկայ Տէրոջը
14 տունը՝ բրուտին նետեցի։ Ետքը՝
Կապեր ըսուած մէկալ գաւազանս
կոտրեցի, որ Յուդայի ու Իսրայէլի
մէջ եղող եղբայրութիւնը աւրեմ։
15 Եւ Տէրը ինծի ըսաւ. Քեզի
նորէն յիմար հովիւի գործիքներ
16 առ. Քանզի ահա ես երկրի վրայ
մէկ հովիւ մը պիտի հանեմ. անի-
կայ կորսուելու վրայ եղողներուն
այցելութիւն պիտի չընէ, ցրուա-
ծը պիտի չփնտռէ. և կոտրածը
պիտի չբժշկէ, ողջը պիտի
չսնուցանէ. հապա գէրերուն միսը
պիտի ուտէ, ու անոնց կճղակները
17 պիտի խորտակէ։ Վա՜յ ունայ-
նութեան հովիւին՝ որ ոչխարները
կը թողու. անոր բազուկին վրայ,
ու աջ աչքին վրայ սուր պիտի
ըլլայ. անոր բազուկը բոլորովին
պիտի չորնայ, ու աջ աչքը բոլո-
րովին պիտի խաւարի։

Ն. Ք. Գ. Ք. Իբր 587

Երեմ. ԺԵ. 2։ Իգ. 11։
Սոփ. Գ. 12։ Հմր 7։
Մատ. ԻԶ. 15։
Մատ. ԻԷ. 9, 12։
Կամ՝ գանձատունը
Եզեկ. ԼԴ. 2, 3, 4։
Կամ՝ եա մնացածը
Երեմ. ԻԳ. 1։ Եզեկ. ԼԴ. 2։ Յով. Ժ. 12, 13։

## ԳԼ. ԺԲ

1 Մարգարէն կը ցուցնէ թէ՝ Երուսաղէմ արբեցութեան բաժակ մը, 3 և ծանր քար մը պիտի ըլլայ իր թշնամիներուն։ 6 Յուդային յաղթանակաւ գերազանցութիւնը։ 9 Երուսաղէմին ապաշխարութիւնը։

1 Իսրայէլի վրայով Տէրոջը խօսքին
պատգամը։ Երկինքը տա-
րածող, ու երկիրը հիմնարկող, ու
մարդուն հոգին անոր մէջը ստեղ-
2 ծող Տէրը կ'ըսէ. Ահա ես Երու-
սաղէմը՝ բոլոր շրջակայ ազգերուն՝
թմրութեան բաժակ պիտի ը-
նեմ. նաև Յուդայի վրայ ալ պիտի
ըլլայ՝ Երուսաղէմի պաշարման ա-
3 տենը։ Եւ պիտի ըլլայ որ այն
օրը Երուսաղէմը՝ բոլոր ժողո-
վուրդներուն ծանր քար պիտի ը-

Ես. ԽԲ. 5։ ԽԴ. 24։ ԽԵ. 12, 18։ ԽԸ. 13։
Թուոց ԺԶ. 22։ Ժող. ԺԲ. 7։ Ես. ԾԷ. 16։ Եբր. ԺԲ. 9։
Ես. ԾԱ. 17, 22, 23։
Հմր 4, 6, 8, 9, 11։ Գլ. ԺԴ. 1։ ԺԴ. 4, 6, 8, 9, 13։
Մատ. ԻԱ. 44։

Ն. Ք. ԳՔ. Իրր 587

նեմ. Ամէն անոնք որ անով կը
բեռնաւորուին, բոլորովին պիտի
կոտրին, թէեւ երկրիս բոլոր ազ-
4 գերը անոր վրայ ժողվուին: Ան
օրը՝ կ՚ըսէ Տէրը, ամէն ձին
սոսկումով պիտի զարնեմ, ու ա-
նոր հեծեալը ապշութեամբ. և
Յուդայի տանը վրայ աչքերս պի-
տի բանամ, ու ժողովուրդնե-
րուն բոլոր ձիերը կուրութեամբ
5 պիտի զարնեմ: Եւ Յուդայի
հազարապետները իրենց սրտին մէ-
ջը պիտի ըսեն. Երուսաղէմի բնա-
կիչները *մեր զօրութիւնն" են զօ-
րաց Տէրոջմով՝ իրենց Աստուծո-
6 վը: Ան օրը Յուդայի հազարա-
պետները ե կրակի վառարանի պէս
պիտի ընեմ՝ փայտերու մէջ, ու
կրակի ջահի պէս՝ որաններու մէջ.
և անոնք աջ կողմէն ու ձախ կող-
մէն բոլոր շրջակայ ժողովուրդները
պիտի ուտեն. և դարձեալ Երու-
սաղէմ իր տեղը՝ Երուսաղէմի մէջ
7 պիտի բնակուի: Եւ Տէրը նախ
Յուդային վրանները պիտի փրկէ,
որպէս զի Դաւիթին տանը պար-
ծանքը, ու Երուսաղէմի բնակիչ-
ներուն պարծանքը՝ Յուդայի վրայ
8 չհպարտանայ: Ան օրը Տէրը Ե-
րուսաղէմի բնակիչներուն պաշտ-
պանութիւն պիտի ընէ. ու անոնց
մէջը զ տկար եղողը՝ ան օրը Դաւի-
թին պէս պիտի ըլլայ. և Դաւիթին
տունը՝ Աստուծոյ պէս, Տէրոջը
հրեշտակին պէս պիտի ըլլայ անոնց
9 առջեւ: Ու պիտի ըլլայ որ ան
օրը՝ է Երուսաղէմի վրայ եկող բոլոր
ազգերը՝ բնաջինջ ընելու ետեւէ պի-
10 տի ըլլամ: ը Եւ Դաւիթին տանը
վրայ, ու Երուսաղէմի բնակիչնե-
րուն վրայ՝ շնորհաց և աղօթից հո-
գին պիտի թափեմ. և անոնք թ ին-
ծի՝ իրենց խոցածին պիտի նային.
ու անոր վրայ՝ ժ մէկ հատիկ զաւակի
վրայ ողբալու պէս՝ պիտի ողբան,
ու անոր վրայ անդրանիկ զաւակի
վրայ ցաւելու պէս պիտի ցաւին:
11 Ան օրը ի Երուսաղէմի մէջ մեծ ողբ
պիտի ըլլայ, լ Մակեդդովի դաշտին
մէջ Ադադ Ռեմոնին ողբին պէս.
12 խ Ու երկիրը պիտի ողբայ, ամէն մէկ
ազգատոհմը առանձին. Դաւիթին
տանը ազգատոհմը առանձին, ու
անոնց կնիկները առանձին. ծ Նա-
թանին տանը ազգատոհմը առան-
ձին ու անոնց կնիկները առան-
13 ձին. Ղեւիին տանը ազգատոհմը
առանձին, ու անոնց կնիկները ա-
ռանձին. Սեմէիին ազգատոհմը
առանձին, ու անոնց կնիկները ա-
14 ռանձին. Բոլոր մնացած ազգա-
տոհմներուն ամէն մէկը առանձին.
ու անոնց կնիկները առանձին

դ Սաղ. հզ. 6: Եզեկ. լը. 4:
* Եբր. իմ զօրութիւնս
ե Աբդ. 18:
զ Յովէլ. գ. 10:
է Անգ. բ. 22: Հմր 3:
ը Երեմ. լա. 9: ծ. 4: Եզեկ. լթ. 29: Յովէլ. բ. 28:
թ Յովհ. ժթ. 34, 37: Յայտ. ա. 7:
ժ Երեմ. զ. 26: Ամով. ը. 10:
ի Գործ. բ. 37:
լ Դ Թագ. իգ. 29: Բ Մն. լե. 24:
խ Մատ. իդ. 30: Յայտ. ա. 7:
ծ Բ Թագ. ե. 14: Ղուկ. գ. 31:

## ԳԼ. ԺԳ

1 Երուսաղէմին մաքրութեանը համար որոշուած աղբիւրը՝ 2 որով անիկայ կռապաշտութենէ ու սուտ մարգարէութիւններէ պիտի մաքրուէր: 7 Քրիստոսի մահը, ու ժողովուրդին երրորդ մասին փորձութիւնը:

1 ա Ան օրը Դաւիթի տանը ու Երու-
սաղէմի բնակիչներուն բ բա-
ցուած աղբիւր մը պիտի ըլլայ,
մեղքի համար ու պղծութեան հա-
2 մար: Եւ պիտի ըլլայ որ՝ ան օրը՝
կ՚ըսէ զօրաց Տէրը, գ կուռքերուն
անունները երկրէն պիտի ջնջեմ, ու
մէյմըն ալ պիտի չյիշուին. և դ ա-
նոնց մարգարէները, ու պիղծ ոգին
3 ալ երկրէն պիտի վերցնեմ: Ու
պիտի ըլլայ որ՝ երբոր մէկ մարդ մը
անկէ ետեւ մարգարէութիւն ընէ,
զանիկայ ծնանող հայրը ու մայրը
անոր պիտի ըսեն. Չապրիս. քան-
զի Տէրոջը անունովը սուտ խօսե-
ցար. և անոր մարգարէութիւն
ըրած ատենը՝ զանիկայ ծնանող
հայրը ու մայրը ե զանիկայ պիտի
4 խոցեն: Ու պիտի ըլլայ որ ան օրը
զ մարգարէները՝ մարգարէութիւն
ըրած ատեննին պիտի ամչնան,
ամէն մէկը իր տեսիլքէն, ու խա-
բելու համար՝ է մազոտ վերարկու
5 պիտի չհագնին: ը Ու անոնց մէ-
կը պիտի ըսէ. Ես մարգարէ չեմ.
ես երկրագործ մարդ եմ. քանզի
իմ մանկութենէս 'ի վեր † զիս
6 ստացուածքներու վրայ դրին": Եւ
անոր պիտի ըսուի. Ձեռքերուդ
մէջ աս վէրքերը ի՞նչ են. ու
անիկայ պիտի ըսէ. Ատոնք իմ բա-
րեկամներուս տանը մէջ ընդունած
վէրքերս են:
7 Արթնցիր ով սուր՝ թ իմ հո-
վիւիս վրայ, ու ժ իմ ընկերս եղող
մարդուն վրայ, կ՚ըսէ զօրաց Տէրը.
ի Հովիւը զարկ, ու ոչխարները ցը-
րուին. ու իմ ձեռքս լ պզտիկնե-
8 րուն վրայ դարձընեմ: Եւ պիտի
ըլլայ բոլոր երկրին մէջ՝ կ՚ըսէ Տէրը՝
որ երկու մասը պիտի կորսուի, ու
պիտի մեռնի, խ ու երրորդ մասը պի-
9 տի մնայ անոր մէջը: Եւ ան երրորդ
մասը ծ կրակէ պիտի անցընեմ, ու
կ զանոնք պիտի զտեմ, ինչպէս որ
արծաթը կը զտուի, և զանոնք
պիտի փորձեմ, ինչպէս որ ոսկին
կը փորձուի. հ անոնք իմ անունս
պիտի կանչեն, ու ես անոնց պա-
տասխան պիտի տամ. ձ Ես պիտի
ըսեմ թէ՝ Անիկայ իմ ժողովուրդս
է. անոնք ալ՝ Տէրը իմ Աստուածս
է՝ պիտի ըսեն:

Ն. Ք. ԳՔ. Իրր 587

ա Գլ. ժբ. 3:
բ Եբր. թ. 14: Ա Պետ. ա. 19: Յայտ. ա. 5:
գ Ես. իգ. 13: Յես. իգ. 7: Սաղ. ժզ. 4: Եզեկ. լ. 13: Ովս. բ. 17: Միք. ե. 13, 14:
դ Բ Պետ. բ. 1:
ե Բ Օր. ժգ. 6, 8: ժը. 20:
զ Միք. գ. 6, 7:
է Դ Թագ. ա. 8: Ես. ի. 2: Մատ. գ. 4:
ը Ամով. է. 14:
† Կամ՝ մարդ մը զիս ստացաւ:
թ Ես. խ. 11: Եզեկ. լդ. 23:
ժ Յովհ. ժ. 30: ժդ. 10, 11: Փիլ. բ. 6:
ի Մատ. իզ. 31: Մար. ժդ. 27:
լ Մատ. ժը. 10, 14: Ղուկ. ժբ. 32:
խ Հռով. ժա. 5:
ծ Ես. խը. 10:
կ Ա Պետ. ա. 6, 7:
հ Սաղ. ծ. 15: ղա. 15: Գլ. ժ. 6:
ձ Սաղ. ճխդ. 15: Երեմ. լ. 22: Եզեկ. ժա. 20: Ովս. բ. 23: Գլ. ը. 8:

## ԳԼ. ԺԴ

1 Երուսաղէմը կործանողներուն կործանումը: 4 Քրիստոսի գալուստը, ու անոր թագաւորու-

*թեանը շնորհքները ։ 12 Երուսաղէմի թշնամիներուն վրայ գալու հարուածը ։ 16 Մնացորդը Տէրոջը պիտի դառնայ ։ 20 ու անոնց բոլոր կարասիները սուրբ պիտի սեպուին ։*

1 Ահա ա Տէրոջը օրը կու գայ, և քու
աւարդ քու մէջդ պիտի բաժ-
2 նուի ։ Քանզի բ բոլոր ազգերը պա-
տերազմի համար Երուսաղէմի վրայ
պիտի ժողվեմ. և քաղաքը պիտի
առնուի, ու գ տուները պիտի կո-
ղոպտուին, և կնիկները պիտի
պղծուին, ու քաղաքին կէսը գե-
րութեան պիտի ելլէ. բայց ժողո-
վուրդին մնացորդը քաղաքէն պիտի
3 չկտրի ։ Եւ Տէրը պիտի ելլէ, ու
ան ազգերուն հետ պիտի պատե-
րազմի, ինչպէս որ պատերազմին
4 օրը պատերազմեցաւ ։ Եւ ան օ-
րը՝ անոր ոտքերը՝ դ Ձիթենեաց լե-
ռանը վրայ պիտի կայնին, որ
Երուսաղէմին առջեն է՝ դէպ 'ի ա-
րեւելք. ու Ձիթենեաց լեռը՝ դէպ
'ի արեւելք ու դէպ 'ի արեւմուտք՝
կէսէն պիտի պատուի. ու խիստ
մեծ ձոր պիտի ըլլայ. և լեռանը կէ-
սը դէպ 'ի հիւսիս, ու կէսը դէպ 'ի
5 հարաւ պիտի քաշուի ։ Եւ դուք
լեռներուն ձորը պիտի փախչիք.
քանզի լեռներուն ձորը մինչև Ասաղ
պիտի հասնի. ու պիտի փախչիք,
ինչպէս որ ե գետնաշարժէն փախաք՝
Յուդայի թագաւորին Ոզիային օ-
րերը. ու իմ Տէր Աստուածս պիտի
գայ. զ բոլոր սուրբերը քու հետդ
6 պիտի ըլլան ։ Եւ պիտի ըլլայ որ
ան օրը՝ *լոյսը պայծառ կամ աղօտ
7 պիտի չըլլայ՚ ։ Ու անիկայ՝ է Տէրո-
ջը յայտնի ը օր մը՝ ո՛չ ցորեկ, ու
ո՛չ գիշեր պիտի ըլլայ. սակայն թ ե-
րեկոյեան ժամանակը լոյս պիտի ըլ-
8 լայ ։ Եւ ան օրը՝ ժ Երուսաղէմէն
կենդանի ջուրեր պիտի ելլեն. կէսը
դէպ 'ի ի արեւելեան ծովը, ու կէսը
դէպ 'ի արեւմտեան ծովը. ամառ
9 ու ձմեռ այնպէս պիտի ըլլայ ։ Եւ
Տէրը բոլոր երկրի վրայ լ թագաւոր
պիտի ըլլայ. ան օրը խ Տէրը մէկ՝
ու անոր անունը մէկ պիտի ըլլայ ։
10 Բոլոր երկիրը ծ դաշտ պիտի դառ-
նայ, Գաբայէն մինչև Ռեմոն, Ե-
րուսաղէմին հարաւային կողմը, ու
պիտի բարձրանայ, ու կ իր տեղը
պիտի բնակուի, Բենիամինի դռնէն
մինչև Առաջին դրանը տեղը՝ մինչև
Անկեանց դուռը, ձ ու Անանայելի
աշտարակէն մինչև թագաւորին
11 հնձանները ։ Եւ հոն պիտի բնակին,
ու ղ ա՛լ նզովք պիտի
չըլլայ. ճ ու Երուսաղէմը ապահո-
վութեամբ պիտի բնակուի ։
12 Եւ աս պիտի ըլլայ ան հարուա-
ծը՝ որով Տէրը պիտի զարնէ ամէն
ժողովուրդները՝ որոնք Երուսաղէմի
դէմ պատերազմեցան. ոտքի վրայ
կայնած ատեննին՝ անոնց մարմինը
պիտի հալի, ու անոնց աչքերը՝
իրենց խոռոչներուն մէջը պիտի հալին,
և անոնց լեզուն՝ իրենց բերնին մէջը
13 պիտի հալի ։ Ու պիտի ըլլայ որ՝
ան օրը անոնց մէջը մ մեծ խռովու-
թիւն պիտի ըլլայ Տէրոջմէ, և ամէն
մէկը իր ընկերին ձեռքը պիտի բռ-
նէ. ու յ անոր ձեռքը իր ընկերին
14 ձեռքին դէմ պիտի վերցուի ։ Եւ
Յուդան ալ Երուսաղէմի † մէջ պի-
տի պատերազմի. ն ու բոլոր շրջա-
կայ ազգերուն ստացուածքը՝ ոսկի,
ու արծաթ, ու հանդերձներ՝ մեծ
առատութեամբ հոն պիտի ժող-
15 վուի ։ շ Եւ ձիին, ջորիին, ուղ-
տին, ու իշուն, և ան բանակնե-
րուն մէջի բոլոր անասուններուն
հարուածը՝ նոյն հարուածին պէս
16 պիտի ըլլայ ։ Ու Երուսաղէմի վրայ
եկած բոլոր ազգերէն ամէն մնացոր-
դը՝ ան ատենը ո տարիէ տարի թա-
գաւորին՝ զօրաց Տէրոջը երկրպա-
գութիւն ընելու, և չ տաղաւարա-
հարաց տօնը կատարելու պիտի ել-
17 լեն ։ պ Ու երկրի ազգատոհմներէն
ո՛վ որ Երուսաղէմ չելլէ թագաւո-
րին՝ զօրաց Տէրոջը երկրպագու-
թիւն ընելու, անոր վրայ անձրև
18 պիտի չըլլայ ։ Եւ թէ որ Եգիպ-
տացւոց ազգատոհմը չելլէ ու չգայ,
(ջ որ անոնք անձրև չունին,) անոնց
վրայ պիտի ըլլայ ան հարուածը,
որով Տէրը պիտի զարնէ ան ազգե-
րը՝ որոնք տաղաւարահարաց տօնը
19 կատարելու չեն ելլեր ։ Ասիկայ
պիտի ըլլայ Եգիպտոսին պատիժը, և
տաղաւարահարաց տօնը կատարելու
չելլող բոլոր ազգերուն պատիժը ։
20 Ան օրը ձիերուն սանձի զարդե-
րուն վրայ՝ ռ ՍՐԲՈՒԹԻՒՆ ՏԵԱՌՆ
պիտի ըլլայ. ու Տէրոջը տանը մէջի
կաթսաները՝ սեղանին առջևի կոն-
21 քերուն պէս պիտի ըլլան ։ Ու Ե-
րուսաղէմի մէջ, և Յուդայի մէջ
ամէն կաթսայ՝ զօրաց Տէրոջը սուրբ
պիտի ըլլայ. և ամէն զոհ ընողները
պիտի գան, ու անոնցմէ պիտի առ-
նեն, ու անոնց մէջը պիտի եփեն.
և ան օրը մէյմըն ալ ս զօրաց Տէրո-
ջը տանը մէջ վ Քանանացի պիտի
չըլլայ ։

Ն. Ք. ԴՔ. Իբր 587

ա Եսա. ժգ. 9։ Յովէլ. բ. 31։ Գործ. բ. 20։
բ Յովէլ. գ. 2։
գ Եսա. ժգ. 16։
դ Տես Եզեկ. ժա. 23։
ե Ամով. ա. 1։
Իբր 787
զ Մատ. ժզ. 27. իդ. 30, 31. իե. 31։ Յուդ. 14։
է Յովէլ. գ. 11։
* Կամ՝ Լոյս պիտի չըլլայ, հապա ցուրտ և սառ։
ը Մատ. իդ. 36։
թ Յայտ. իբ. 5։
ժ Եսա. ձ. 26։ կ. 19, 20։ Յայտ. իա. 23։
ի Եզեկ. խէ. 1։ Յովէլ. գ. 18։ Յայտ. իբ. 1։
լ Յովէլ. բ. 20։
խ Դան. բ. 44։ Յայտ. ժա. 15։
ծ Եփե. դ. 5, 6։
կ Եսա. խ. 4։
հ Գլ. ժբ. 6։
ձ Նեեմ. գ. 1։ ժբ. 39։ Երեմ. լա. 38։
ղ Երեմ. լա. 40։

Ն. Ք. ԴՔ. Իբր 587

ճ Երեմ. իգ. 6։
մ Ա Թագ. ժդ. 15, 20։ Դատ. է. 22։ բ Մն. ի. 23։ Եզեկ. լը. 21։
յ Կամ՝ դէմ
ն Եզեկ. լթ. 10, 17։
շ Հմր 12։
ո Եսա. կ. 6, 7, 9։ կզ. 23։
չ Ղև. իգ. 34, 43։ Նեեմ. ը. 14։ Ովս. ժբ. 10։ Յովհ. է. 2։
պ Եսա. կ. 12։
ջ Բ Օր. ժա. 10։
ռ Տես Եսա. իգ. 18։
ս Եփե. բ. 19, 20, 21, 22։
վ Եսա. լե. 8։ Յովէլ. գ. 17։ Յայտ. իա. 27։ իբ. 15։

# ՄԱՐԳԱՐԷՈՒԹԻՒՆ ՄԱՂԱՔԻԱՅ

Ն. Ք. ԴՔ. ԻՐՐ 397

## ԳԼՈՒԽ Ա

1 Մաղաքիա կը գանգատի Իսրայէլին ապերախտութեանը, 6 անկրօնասիրութեանը, 12 և պղծութեանը համար։

1 Մաղաքիային ձեռքովը Իսրայէ-
լին եղած Տէրոջը խօսքին
2 պատգամը։ ᵃԵս ձեզ սիրեցի,
կ'ըսէ Տէրը. ու դուք՝ Մեզ ինչո՞վ
սիրեցիր՝ կ'ըսէք։ Միթէ Եսաւը
Յակոբին եղբայրը չէ՞ր, կ'ըսէ Տէ-
3 րը, ու ᵇՅակոբը սիրեցի, Բայց
Եսաւը ատեցի. և ᶜանոր լեռները՝
ամայութեան, ու անոր ժառան-
գութիւնը՝ անապատի *բնակու-
4 թեան դարձուցի"։ Թէ որ Եդովմը
ըսէ թէ՝ Կործանեցանք, բայց պի-
տի դառնանք, ու աւերակները
շինենք, զօրաց Տէրը այսպէս կ'ը-
սէ. Անոնք պիտի շինեն, բայց ես
պիտի փլցնեմ. և անոնք պիտի
կոչուին՝ Անօրէնութեան սահման,
ու ժողովուրդ՝ որուն դէմ Տէրը
5 յաւիտեան բարկացեր է։ Եւ ձեր
աչքերը պիտի տեսնեն, ու պիտի
ըսէք. Տէրը Իսրայէլի †սահմանէն
անդին" փառաւորուի։
6 Տղան ᵈիր հօրը, ու ծառան իր
տիրոջը պատիւ կ'ընէ. ᵉԹէ որ
ես հայր եմ, իմ պատիւս ո՞ւր է,
ու թէ որ տէր եմ, ինծմէ վախ-
նալը ո՞ւր է, կ'ըսէ ձեզի զօրաց
Տէրը, ո՛վ քահանաներ՝ որ իմ ա-
նունս կ'անարգէք. ᶠԵւ դուք կ'ը-
սէք. Քու անունդ ի՞նչ բանով
7 անարգեցինք։ Իմ սեղանիս վրայ
ᵍպիղծ հաց կը մատուցանէք, ու
կ'ըսէք. Քեզ ինչո՞վ պղծեցինք.
ʰՏէրոջը սեղանը անարգ է՝ ըսելով-
8 նիդ։ Ու ⁱԵրբոր կոյրը զոհի հա-
մար կը մատուցանէք, գէշ չէ՞.
ու երբոր կաղը, կամ հիւանդը կը
մատուցանէք, գէշ չէ՞. աղէ՛,
զանիկայ քու իշխանիդ ընծայէ,
միթէ քեզի պիտի հաճի՞, կամ
ʲ‡քեզ սիրով" պիտի ընդունի՞,
9 կ'ըսէ զօրաց Տէրը։ Եւ հիմա Աս-
տուծոյ երեսը աղաչեցէ՛ք, որ մեզի
ողորմութիւն ընէ. ᵏասիկայ ձեր
ձեռքէն եղաւ. միթէ ձեզ սիրով
պիտի ընդունի՞, կ'ըսէ զօրաց Տէ-
10 րը։ Ձեր մէջը անգամ դռները գոցող
ո՞վ կայ. Նիմ սեղանիս
կրակն ալ ձրի չէք վառեր. ձեզի
չեմ հաճիր, կ'ըսէ զօրաց Տէրը.
ᵐու ձեր ձեռքէն ընծայ չեմ ըն-
11 դունիր։ Քանզի ⁿարևուն ծա-
գած տեղէն մինչև անոր մտած տե-
ղը՝ ᵒազգաց մէջ իմ անունս մեծ
պիտի ըլլայ. և ᵖամէն տեղ իմ
անուանս՝ ᵠխունկ ու սուրբ ընծայ
պիտի մատուցուի. ʳքանզի իմ
անունս ազգաց մէջ մեծ պիտի ըլ-
12 լայ, կ'ըսէ զօրաց Տէրը։ Ու
դուք զանիկայ կը պղծէք, ըսելով
թէ՝ ˢՏէրոջը սեղանը պիղծ է, ու
անոր բերքը ⁻ուտելիքը՝ կերակուրը՝
13 անարգ։ Նաև կ'ըսէք. Ահա՛ ինչ
աշխատութիւն է, ու անոր վրայ
կը փչէք, կ'ըսէ զօրաց Տէրը. և
յափշտակուածը, ու կաղը. ու
հիւանդը բերիք. այսպէս ընծայ
բերիք. ᵗմիթէ զանիկայ ձեր ձեռ-
քէն պիտի ընդունի՞մ, կ'ըսէ Տէ-
14 րը։ Բայց անիծեալ ըլլայ ան խա-
բեբայ մարդը, որ իր հօտին մէջը
որձ ունենալով, ուխտ կ'ընէ, և
արատաւորը ᵘՏէրոջը կը մատու-
ցանէ. քանզի ᵛես մեծ Թագաւոր
եմ, կ'ըսէ զօրաց Տէրը, ու իմ
անունս ազգաց մէջ ահարկու է։

## ԳԼ. Բ

1 Մարգարէն սաստիկ կը յանդիմանէ քահանաները՝ որ իրենց ուխտը զանց կ'ընեն, 11 նաև ժողովուրդը՝ իրենց կռապաշտութեանը, 14 շնութեանը, 17 ու անհաւատութեանը համար։

1 Եւ հիմա աս պատուէրը ձեզի է՝
2 ո՛վ քահանաներ։ ʷԹէ որ մը-
տիկ չընէք, ու թէ որ ձեր սրտին
մէջը չդնէք, որ իմ անուանս պա-
տիւ տաք, կ'ըսէ զօրաց Տէրը, ան
ատենը ձեզի անէծք պիտի ղրկեմ,
ու ձեր օրհնութիւնները պիտի անի-
ծեմ. այո՛ զանոնք արդէն անիծեր
եմ. քանզի դուք ձեր սրտին մէջը
3 չէք դներ։ Ահա՛ ես ձեր սերունդը
պիտի յանդիմանեմ, ու ձեր երե-
սին վրայ աղբ՝ ձեր տօներուն աղբը
պիտի ցանեմ. և անիկայ ˣձեզ իր
4 հետը պիտի տանի։ Ու պիտի
գիտնաք, որ ես ձեզի ղրկեցի աս
պատուէրը, որպէս զի իմ ուխտս
Ղևիին հետ ըլլայ, կ'ըսէ զօրաց
5 Տէրը։ ʸԻմ ուխտս անոր հետ էր՝

ᵃ Բ Օր. է. 8. ժ. 15։
ᵇ Հռով. Թ. 13։
ᶜ Երեմ. խԹ. 18։ Եզեկ. լե. 3. 4. 7. 9. 14. 15։ Աբդ. 10, ևն։
* Կամ՝ ճագարներուն տուն։
† Կամ՝ սահմանին վրայ
ᵈ Ել. ի. 12։
ᵉ Ղու. զ. 46։
ᶠ Գլ. բ. 14. 17. գ. 7. 8. 13։
ᵍ Բ Օր. ժե. 21։
ʰ Եզեկ. խա. 22։ Հմր 12։
ⁱ Ղև. իբ. 22։ Բ Օր. ժե. 21։ Հմր 14։
ʲ Յոբ. խբ. 8։
‡ Եբր. քու երեսդ
ᵏ Ովս. ժգ. 9։
ˡ Տիմ. ակոր. Թ. 13։

Ն. Ք. ԴՔ. ԻՐՐ 397
ᵐ Եսա. ա. 11։ Երեմ. զ. 20։ Ամով. ե. 21։
ⁿ Սաղ. ճժգ. 3։ Եսա. ծԹ. 19։
ᵒ Եսա. կ. 3, 5։
ᵖ Յով. դ. 21. 23։ ա Տիմ. բ. 8։
ᵠ Յայտ. ը. 8։
ʳ Եսա. կզ. 19. 20։
ˢ Հմր 7։
ᵗ Ղև. իբ. 20, ևն։
ᵘ Հմր 8։
ᵛ Սաղ. խէ. 2։ ա Տիմ. զ. 15։
ʷ Ղև. իզ. 14, ևն։ Բ Օր. իը. 15, ևն։
ˣ Գ Թագ. ժդ. 10։
ʸ Թուոց. իե. 12։ Եզեկ. լդ. 25։ լէ. 26։

կենաց ու խաղաղութեան համար .
ու զանոնք անոր տուի ան երկիւ–
ղին փոխարէն՝ որով ինծմէ կը վախ–
նար , ու իմ անունս երեսէն կը
6 սարսափէր ։ Ճշմարտութեան օ–
րէնքը անոր բերնին մէջն էր , և ա–
նոր շրթունքներուն մէջ անիրա–
ւութիւն չգտնուեցաւ . ինծի հետ
խաղաղութեամբ և ուղղութեամբ
կը քալէր , ու շատերը անօրէնու–
7 թենէ դարձուց ։ Քանզի քահա–
նային շրթունքները գիտութիւն
պահելու են . և մարդիկ անոր բեր–
նէն օրէնքը փնտռելու են . քանզի
անիկայ զօրաց Տէրոջը դեսպանն է ։
8 Բայց դուք ճամբայէն խոտորեցաք .
շատերը օրէնքին մէջ գայթակղե–
ցուցիք , Ղեւիին ուխտը աւրե–
9 ցիք , կ՚ըսէ զօրաց Տէրը ։ Ուստի
ես ալ ձեզ բոլոր ժողովուրդին
առջեւ անարգուած , ու ցած ըրի ,
ինչպէս որ դուք իմ ճամբաներս
չպահեցիք , ու օրէնքին մէջ ակն–
առութիւն ըրիք ։
10 Միթէ ամէնքս մէկ հայր չու–
նի՞նք . միթէ մէկ Աստուած չըս–
տեղծե՞ց մեզ . ինչո՞ւ համար մեր
հայրերուն ուխտը աւրելով , մեզմէ
ամէն մէկը իր եղբօրը նենգութիւն
11 կ՚ընէ ։ Յուդան նենգութիւն ը–
րաւ . և Իսրայէլի մէջ ու Երուսա–
ղէմի մէջ պղծութիւն գործուե–
ցաւ . վասն զի Յուդան պղծեց Տէ–
րոջը սրբարանը , որն որ ինքը կը
սիրէր , և օտար աստուծոյ աղջկա–
12 նը էրիկ եղաւ ։ Տէրը Յակոբի վը–
րաններէն բնաջինջ պիտի ընէ աս
բանը ընող մարդը՝ * արթուն եղո–
ղը ու պատասխան տուողը" , և
զօրաց Տէրոջը ընծայ մատուցանո–
ղը ։
13 Եւ դարձեալ ասիկայ ըրիք .
Տէրոջը սեղանը արցունքներով ,
լացով ու ողբով ծածկեցիք . այն–
պէս որ՝ Անիկայ մէյմըն ալ ընծա–
յին չնայիր , որ ուզենայ ձեր ձեռ–
14 քէն հաճութեամբ ընդունի ։ Բայց
դուք ըսիք , Ինչո՞ւ . անոր համար
որ՝ Տէրը վկայ եղաւ քու և քու
երիտասարդութեանդ կնկանը մէջ–
տեղը , որուն հետ անհաւատար–
մութեամբ վարուեցար . ու անի–
կայ քու ընկերդ , ու քու ուխտիդ
15 կնիկն է ։ Եւ մէկը չըրա՞ւ , որ
Հոգիին առատութիւնը ունէր .
և ան մէկը ի՞նչ կը փնտռէր . Աս–
տուծոյ սերունդ . ուրեմն ձեր հո–
գիին զգուշութիւն ըրէք , ու ձեզ–
մէ մէկը իր երիտասարդութեանը
կնկանը հետ անհաւատարմու–
16 թեամբ չվարուի ։ Քանզի Իսրա–
յէլի Տէր Աստուածը կ՚ըսէ թէ՝
† ինքը կ՚ատէ կնիկ արձակելը" . բայց
մարդը իր հանդերձովը զրկանքը կը
ծածկէ , կ՚ըսէ զօրաց Տէրը . ուս–
տի ձեր հոգիին զգուշութիւն ը–
րէք , ու անհաւատարիմ մի՛ ըլ–
լաք ։
17 Ձեր խօսքովը Տէրը ձանձրա–
ցուցիք . բայց դուք կ՚ըսէք . Ինչո՞վ
ձանձրացուցինք ։ Ասով՝ ըսելով–
նիդ . Ամէն չարութիւն ընողը Տէ–
րոջը աչքերուն առջեւ հաճոյ է .
ու ինքը անոնց կը հաւնի . կամ
թէ՝ Դատաստանի Աստուածը ո՞ւր
է ։

## ԳԼ․ Գ

1 Քրիստոսի առջեւէն գալու դեսպանը ։ ու Քրիստոսի վեհափառութիւնը ու շնորհքը ։ 7 Ժողովուրդին ապստամբութեանը , 8 սրբապղծութեանը , 13 ու անհաւատութեանը վըրայով ։ 16 Աստուծմէ վախցողներուն տըրուելու օրհնութիւններուն խոստմունքը ։

1 Ահա ես իմ դեսպանս կը ղրկեմ ,
ու իմ առջեւս ճամբայ պիտի
պատրաստէ . և ձեր փնտռած Տէ–
րը՝ այսինքն ուխտին հրեշտակը՝
որուն կը հաւնիք , յանկարծ իր
տաճարը պիտի գայ . ահա կու գայ՝
2 կ՚ըսէ զօրաց Տէրը . Ու անոր գա–
լուստեանը օրը՝ ո՞վ կրնայ դիմա–
նալ , և անոր երեւնալուն ատենը՝
ո՞վ կրնայ կայնիլ . քանզի անի–
կայ հալեցընողին կրակին պէս , ու
թափիչներուն օճառին պէս պիտի
3 ըլլայ . Եւ անիկայ արծաթ հա–
լեցընողի ու մաքրողի պէս պիտի
նստի , ու Ղեւիի որդիները պիտի
մաքրէ , և զանոնք ոսկիի պէս ու
արծաթի պէս պիտի զտէ . ու անոնք
արդարութեամբ Տէրոջը ընծայ
4 մատուցանողներ պիտի ըլլան . Եւ
Յուդային ու Երուսաղէմին ըն–
ծան հին օրերուն պէս , ու առջի
տարիներուն պէս՝ Տէրոջը ընդու–
5 նելի պիտի ըլլայ ։ Ու դատաստա–
նի համար ձեզի պիտի մօտենամ ,
և կախարդներուն , ու շնացողնե–
րուն , ու սուտ երդում ընող–
ներուն , և վարձկանին՝ իր վարձքին
վրայով , որբեւայրիին , ու որբին
զրկանք ընողներուն , և պանդուխ–
տին իրաւունքը խոտորեցընողնե–
րուն , ու ինծմէ չվախցողներուն
դէմ՝ արագ վկայ պիտի ըլլամ ,
6 կ՚ըսէ զօրաց Տէրը ։ Քանզի ես Ե–
հովայ եմ , չեմ փոխուիր . անոր
համար դուք՝ ո՛վ Յակոբի որդիք՝
չսպառեցաք ։
7 Ձեր հայրերուն օրերէն ՚ի վեր իմ
հրամաններէս զատուեցաք , ու զա–
նոնք չպահեցիք . ինծի դարձէք .
ու ես ձեզի պիտի դառնամ , կ՚ըսէ
զօրաց Տէրը . սակայն դուք կ՚ը–
8 սէք . Ինչո՞վ դառնանք ։ Միթէ մարդ
զԱստուածը կը կողոպտէ՞ , որ դուք

Ն․ Ք․ ԳՖ․ Իրր 397
Բ Օր․ ԼԳ․ 8, 9։
Բ Օր․ ԼԳ․ 10։
Երեմ․ ԻԳ․ 22։ Յակ․ Ե․ 20։
Բ Օր․ ԺԷ․ 9, 10։ Իէ․ 8։ Ղեւ․ Ժ․ 11։ Եզր․ Է․ 10։ Երեմ․ ԺԸ․ 18։ Անգ․ Բ․ 11, 12։
Գաղ․ Դ․ 14։
Ա Թագ․ Բ․ 17։ Երեմ․ ԺԸ․ 15։
Նեեմ․ ԺԳ․ 29։
Ա Թագ․ Բ․ 30։
Ա Կոր․ Ը․ 6։ Եփե․ Դ․ 6։
Յոբ․ ԼԱ․ 15։
Եզր․ Թ․ 1։ Ժ․ 2։ Նեեմ․ ԺԳ․ 23։
* Կամ՝ ուսուցիչը ու աշակերտը ,
Նեեմ․ ԺԳ․ 28, 29։
Առակ․ Ե․ 18։
Առակ․ Բ․ 17։
Տես Մատ․ Ե․ 23։ ԺԹ․ 8։
† Կամ՝ Թէ որ կ՚ատէ զանիկայ, թող արձակէ․ Բ Օր․ ԻԴ․ 1։

Ն․ Ք․ ԳՖ․ 397
Ես․ ԽԳ․ 24։ Գլ․ Գ․ 13, 14, 15։
Մատ․ ԺԱ․ 10։ Մար․ Ա․ 2։ Ղուկ․ Ա․ 76։ Է․ 27։
Ես․ Խ․ 3։
Ես․ ԿԳ․ 9։
Գլ․ Դ․ 1։
Յայտ․ Զ․ 17։
Տես Ես․ Դ․ 4։ Մատ․ Գ․ 10, 11, 12։
Ես․ Ա․ 25։ Զաք․ ԺԳ․ 9։
Ա Պետ․ Բ․ 5։
Գլ․ Ա․ 11։
Զաք․ Ե․ 4։ Յակ․ Ե․ 4, 12։
Թուոց․ ԻԳ․ 19։ Հռով․ ԺԱ․ 29։ Յակ․ Ա․ 17։
Ողբ․ Գ․ 22։
Գործ․ Է․ 51։
Զաք․ Ա․ 3։
Գլ․ Ա․ 6։

Ն. Ք. ԴՔ. ԻԲՐ 397

Նեեմ. ժգ. 10, 12 :
Առակ. գ. 9, 10 :
Ծնն. իը. 20 : Բ Մն. լա. 11 : Նեեմ. ժ. 38 : ժգ. 12 :
Ծնն. է. 11 : Դ Թագ. է. 2 :
Բ Մն. լա. 10 :
Ամով. դ. 9 :
Դան. ը. 9 :
Գլ. բ. 17 :
Յոբ. իա. 14, 15 : իբ. 17 : Սաղ. հգ. 13 : Սոփ. ա. 12 :
Սաղ. հգ. 12 : Գլ. բ. 17 :
Սաղ. ղե. 9 :
Սաղ. կզ. 16 : Գլ. դ. 2 :
Եբր. գ. 13 :
Սաղ. ծզ. 8 : Ես. կե. 6 : Յայտ. ի. 12 :
Ելք. ժթ. 5 : Բ Օր. է. 6 : Սաղ. ճլե. 4 : Տիտ. բ. 14 : Ա Պետ. բ. 9 :
Սաղ. ճգ. 13 :

զիս կը կողոպտէք . բայց դուք
կ'ըսէք . Քեզմէ ի՞նչ կողոպտե-
ցինք . Տասանորդներ , ու ընծա-
9 ներ ։ Դուք անէծքով անիծուած
էք . քանզի դուք՝ բոլոր ազգդ զիս
10 կողոպտեցիք ։ Բոլոր տասա-
նորդները շտեմարանը տարէք ,
որ իմ տանս մէջ պաշար ըլլայ . և
ասով զիս փորձեցէք , կ'ըսէ զօրաց
Տէրը , թէ արդեօք ձեզի երկին-
քին պատուհանները չե՞մ բանար ,
ու ձեզի օրհնութիւն թափեր ,
այնպէս որ՝ անոր բաւական տեղ
11 չըլլայ ։ Եւ ձեզի համար ուտողը
պիտի յանդիմանեմ . ու անիկայ
ձեր երկրին պտուղը պիտի չապա-
կանէ . և ձեր այգիին մէջ որթը
անպտուղ պիտի չըլլայ , կ'ըսէ զօ-
12 րաց Տէրը ։ Եւ ամէն ազգերը ձեզի
երանի պիտի տան . քանզի դուք՝
ցանկալի երկիր պիտի ըլլաք ,
13 կ'ըսէ զօրաց Տէրը ։ Ձեր խօս-
քերը ինծի դէմ խիստ եղան , կ'ը-
սէ Տէրը . բայց դուք կ'ըսէք .
Քեզի դէմ ի՞նչ խօսեցանք ։
14 Դուք ըսիք . Աստուծոյ ծառա-
յութիւն ընելը պարապ բան է . և
անոր պահպանութիւնը պահելէն ,
ու զօրաց Տէրոջը առջևը սուգով
15 քալելէն ի՞նչ շահեցանք . Եւ հի-
մա մենք հպարտներուն՝ երանի
կ'ըսենք . ամբարշտութիւն ընող-
ները անգամ բարեշէն կ'ըլլան .
Աստուած ալ կը փորձեն , ու
կ'ազատին ։
16 Ան ատենը Տէրոջմէ վախցողնե-
րը իրարու հետ խօսեցան . և Տէ-
րը մտիկ ըրաւ , ու լսեց . և իր
առջևը յիշատակի գիրք գրուե-
ցաւ Տէրոջմէ վախցողներուն հա-
մար , ու անոր անունը մտածող-
17 ներուն համար ։ Եւ անոնք իմս
պիտի ըլլան , կ'ըսէ զօրաց Տէրը ,
ան օրը՝ որ ես սեփհական ժառանգս
ժողվեմ . ու անոնց պիտի խնա-
յեմ , ինչպէս որ մարդ մը կը խնայէ
իր որդւոյն՝ որ իրեն ծառայու-
18 թիւն կ'ընէ ։ Եւ պիտի դառ-
նաք , ու արդարին ու ամբա-
րըշտին , Աստուծոյ ծառայութիւն
ընողին , և անոր ծառայութիւն
չընողին տարբերութիւնը պիտի
տեսնէք ։

ԳԼ. Դ

1 Մարգարէն կը յայտնէ Աստուծոյ դատաս-
տանը՝ որ պիտի գայ չարերուն վրայ , 2 ու
օրհնութիւնը՝ բարիներուն վրայ . 4 կը յոր-
դորէ ժողովուրդը որ օրէնքին ուշադրութիւն
ընեն , 5 ու Եղիային գալուն՝ և անոր պաշտօ-
նին վրայով կը խօսի ։

1 Քանզի ահա փուռի պէս վա-
ռած օրը կու գայ . ու բոլոր
հպարտները , և բոլոր ամբարըշ-
տութիւն ընողները յարդի պէս
պիտի ըլլան . ու գալու օրը զա-
նոնք պիտի այրէ՝ կ'ըսէ զօրաց
Տէրը , այնպէս որ՝ անոնց ար-
մատ կամ ոստ պիտի չթողու ։
2 Բայց ձեզի՝ իմ անունէս վախ-
ցողներուդ՝ արդարութեան ա-
րեգակը պիտի ծագի , և անոր
թևերուն վրայ բժշկութիւն պիտի
ըլլայ . ու դուք գոմի պարարտ որ-
թերուն պէս դուրս պիտի ելլէք ,
3 ու պիտի ցատկէք ։ Եւ ամբա-
րիշտները պիտի կոխէք . վասն զի
իմ գործ տեսնելու օրս՝ անոնք
ձեր ոտից թաթերուն տակը մո-
խիր պիտի ըլլան , կ'ըսէ զօրաց
Տէրը ։
4 Յիշեցէք իմ ծառայիս Մով-
սէսին օրէնքը , զոր Քորեբի մէջ
կանոնները ու դատաստանները , որ
անոր պատուիրեցի Քորեբի մէջ
5 բոլոր Իսրայէլին համար ։ Ահա
ես՝ Եղիա մարգարէն ձեզի պիտի
ղրկեմ , Տէրոջը մեծ ու ա-
6 հեղ օրը չեկած . Ու անիկայ՝ հայ-
րերուն սիրտը՝ որդւոցը , ու որ-
դւոցը սիրտը՝ հայրերուն պիտի
դարձընէ . որ չըլլայ թէ ես գամ ,
ու երկիրը անէծքով զարնեմ ։

Ն. Ք. ԴՔ. ԻԲՐ 397

Սաղ. ծը. 11 :
Յովէլ. բ. 31 : Գլ. գ. 2 : Բ Պետ. գ. 7 :
Տես գլ. գ. 18 :
Աբդ. 18 :
Ամով. բ. 9 :
Գլ. գ. 16 :
Տես Ղուկ. ա. 78 : Եփես. ե. 14 : Բ Պետ. ա. 19 :
Յայտ. բ. 28 :
Բ Թագ. իբ. 43 : Միք. է. 10 : Զաք. ժ. 5 :
Ելք. ի. 3, 22 :
Սաղ. ճխէ. 19 :
Բ Օր. դ. 10 :
Մատ. ժա. 14 : ժէ. 11 : Մար. թ. 11 : Ղուկ. ա. 17 :
Յովէլ. բ. 31 :
Զաք. ե. 3 :
Զաք. ժդ. 12 :

## ՍՈՒՐԲ ԳՐՈՑ ՄԷՋ ՅԻՇՈՒԱԾ ՉԱՓԵՐՈՒՆ, ԿՇԻՌՆԵՐՈՒՆ ԵՒ ԴՐԱՄՆԵՐՈՒՆ ՑԱՆԿԸ ։

### 1 · ԵՐԿԱՅՆՈՒԹԵԱՆ ՉԱՓԵՐ ։

| | Էնտազէ և 100-րդ |
|---|---|
| Ուղուկ, չորս մատնաչափ, . . . | · 14 |
| Թիզ, 3 ուղուկ, . . . . . . | · 43 |
| Կանգուն, 2 թիզ, . . . . . . | · 86 |
| Գրկաչափ, 4 կանգուն, . . . . | 3 · 46 |
| Եզեկիելի եղէգը, 6 կանգուն, . . | 5 · 18 |
| Ասպարէզ, 100 գրկաչափ, . . . | 345 · 64 |
| Շաբաթ օրուան ճամբայ, 5 ասպարէզ, . . . . . . . . . . . | 1,728 · 20 |
| Մղոն, 10 ասպարէզ, . . . . | 3,456 · 40 |

### 2 · ՀԵՂԱՆԻՒԹՈՑ ՉԱՓԵՐ ։

| | Օխյ Տրմ |
|---|---|
| Ճաշակ, . . . . . . . . . . . | 100 |
| Հիմէն, 12 ճաշակ, . . . . . . | 3 |
| Մար, 6 հիմէն, . . . . . . . | 18 |
| Քոռ, 10 մար, . . . . . . . | 180 |

### 3 · ԱՐՄՏԵԱՑ ՉԱՓԵՐ ։

| | Օխյ Տրմ |
|---|---|
| Կապիճ, . . . . . . . . . . . | 1 |
| Օմեր, (տասանորդ,) արդուին 10-րդ մասը, . . . . . . . . . . | 1 320 |
| Գրիւ, 6 կապիճ, . . . . . . . | 6 |
| Արդու, 3 գրիւ, . . . . . . . | 18 |
| Քոռ, կամ խոմեր, 10 արդու, | 180 |

### 4 · ԿՇԻՌՆԵՐ ։

| | Օխյ Տրմ և 100-րդ |
|---|---|
| Կերատ, . . . . . . . . . . | · 24 |
| Սիկղ, 20 կերատ, . . . . . . | 4 · 86 |
| Մնաս, 100 սիկղ, . . . . . . | 1 86 · 10 |
| Տաղանդ, 30 մնաս, . . . . . . | 36 183 |

### 5 · ԵԲՐԱՅԵՑԻՈՑ ԱՐԾԱԹ ՈՒ ՈՍԿԻ ԴՐԱՄՆԵՐՈՒՆ ՈՒ ԿՇԻՌՆԵՐՈՒՆ ԱՐԺԷՔԸ ։

| Արծաթէ | Ղրշ Փրյ |
|---|---|
| Կերատ, . . . . . . . . . . | 26 |
| Սիկղ, . . . . . . . . . . . | 13 |
| Մնաս, . . . . . . . . . . . | 1,300 |
| Տաղանդ, . . . . . . . . . . | 99,000 |
| Ոսկէ | |
| Սիկղ, . . . . . . . . . . . | 208 |
| Տաղանդ, . . . . . . . . . . | 624,000 |

### 6 · ՀՌՈՎՄԱՅԵՑԻՈՑ ԴՐԱՄՆԵՐԸ ։

| | Ղրշ Փրյ և 100-րդ |
|---|---|
| Լումայ, . . . . . . . . . . | 1 · 67 |
| Նաքարակիտ, 2 լումայ, . . . | 3 · 75 |
| Դանկ, 4 նաքարակիտ, . . . | 15 |
| Դահեկան, 10 դանկ, . . . . | 3 30 |
| Երկդրամեան, 2 դահեկան, . . | 7 20 |
| Ստատեր, 4 դահեկան, . . . . | 15 |
| Մնաս, 100 դահեկան, . . . . | 375 |

# ՆՈՐ

# ԿՏԱԿԱՐԱՆ

## ՏԵԱՌՆ ՄԵՐՈՅ

# ՅԻՍՈՒՍԻ ՔՐԻՍՏՈՍԻ

---

ՅՈՒՆԱԿԱՆ ԲՆԱԳՐԷՆ ԹԱՐԳՄԱՆՈՒԱԾ

---

ՆՈՐ ԵՕՐՔ

Ի ՏՊԱՐԱՆԻ ԱՍՏՈՒԱԾԱՇՈՒՆՉԻ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ

1917

# ԱՒԵՏԱՐԱՆ ԸՍՏ ՄԱՏԹԷՈՍԻ

## ԳԼՈՒԽ Ա

1 Քրիստոսի ազգաբանութիւնը Աբրահամէն մինչև Յովսէփ · 18 Կոյս Մարիամը՝ որ Յովսեփին նշանուած էր, Սուրբ Հոգիէն կը յղանայ ։ 19 Հրեշտակը Յովսեփին սխալ կարծիքը կ'ուղղէ, և կը մեկնէ Քրիստոսի անունները ։

1 Գիրք ա ծննդեան Յիսուսի Քրիս-
տոսի բ Դաւիթի որդւոյն, գ Աբ-
րահամի որդւոյն ։
2 դ Աբրահամ ծնաւ Իսահակը ·
ե Իսահակ ծնաւ Յակոբը · զ Յակոբ
ծնաւ Յուդան՝ ու անոր եղբայրնե-
3 րը · է Յուդա ծնաւ Փարէսը ու
Զարան՝ Թամարէն ը Փարէս ծը-
նաւ Եսրոնը · Եսրոն ծնաւ Արա-
4 մը · Արամ ծնաւ Ամինադաբը
Ամինադաբ ծնաւ Նաասոնը · Նա-
5 ասոն ծնաւ Սաղմոնը · Սաղմոն ծը-
նաւ Բոոսը՝ Ռախաբէն · Բոոս
ծնաւ Ովբէդը՝ Հռութէն · Ովբէդ
ծնաւ Յեսսէն · թ Յեսսէ ծնաւ Դա-
6 ւիթ թագաւորը · ժ Դաւիթ թա-
գաւորը ծնաւ Սողոմոնը՝ Ուրիայի
7 կնիկէն · ժա Սողոմոն ծնաւ Ռոբովա-
մը · Ռոբովամ ծնաւ Աբիան · Ա-
8 բիա ծնաւ Ասան · Ասա ծնաւ
Յովսափատը · Յովսափատ ծնաւ
Յովրամը · Յովրամ ծնաւ Ոզիան ·
9 Ոզիա ծնաւ Յովաթամը · Յովա-
թամ ծնաւ Աքազը · Աքազ ծնաւ
10 Եզեկիան · ժբ Եզեկիա ծնաւ Մանա-
սէն · Մանասէ ծնաւ Ամոնը · Ամոն
11 ծնաւ Յովսիան · ժգ Յովսիա ծնաւ
Յեքոնիան ու անոր եղբայրները
ժդ Բաբելոնեան գերութեանը ատեն-
12 ները · Բաբելոն գերութեան եր-
թալնէն ետև՝ ժե Յեքոնիա ծնաւ Սա-
ղաթիէլը · Սաղաթիէլ ծնաւ ժզ Զօ-
13 րաբաբէլը · Զօրաբաբէլ ծնաւ
Աբիուդը · Աբիուդ ծնաւ Եղիա-
կիմը · Եղիակիմ ծնաւ Ազովրը ·
14 Ազովր ծնաւ Սադովկը · Սադովկ
ծնաւ Աքիմը · Աքիմ ծնաւ Եղիու-
15 դը · Եղիուդ ծնաւ Եղիազարը ·
Եղիազար ծնաւ Մատթանը ·
16 Մատթան ծնաւ Յակոբը · Յա-
կոբ ծնաւ Յովսէփը՝ Մարիամին
էրիկը, որմէ ծնաւ Յիսուս, որ
17 ըսուեցաւ Քրիստոս ։ Արդ բոլոր
ազգերը Աբրահամէն մինչև Դա-
ւիթ՝ տասնուչորս ազգ, և Դաւի-
թէն մինչև Բաբելոնեան գերու-
թիւնը՝ տասնուչորս ազգ, ու Բա-
բելոնեան գերութենէն մինչև Քը-
րիստոս տասնուչորս ազգ ։
18 Եւ ժէ Յիսուսի Քրիստոսի ծնուն-
դը ասանկ եղաւ · անոր մայրը
Մարիամ՝ Յովսեփին նշանուած,
դեռ իրարու քով չեկած՝ ժը Սուրբ
19 Հոգիէն յղացած գտնուեցաւ ։ Եւ
Յովսէփ անոր էրիկը արդար մարդ
ըլլալով ու չուզելով որ զանիկայ
ժթ խայտառակ ընէ, մտածեց որ ծած-
20 կաբար արձակէ զանիկայ · Եւ
քանի որ անիկայ ասոնք կը մը-
տածէր, ահա՝ Տէրոջը հրեշտակը
երազի մէջ երեւցաւ անոր՝ ու ըսաւ.
Յովսէփ՝ Դաւիթի որդին, մի՛
վախնար քեզի առնել քու Մա-
րիամ կնիկդ, ի ինչու որ անոր ներսի
21 դին ծնածը Սուրբ Հոգիէն է ։ Եւ
իա որդի մը պիտի ծնանի, ու անոր
անունը * Յիսուս դնես, իբ քանզի ա-
նիկայ իր ժողովուրդը իրենց մեղ-
22 քերէն պիտի փրկէ · Եւ աս ամէ-
նը եղաւ. որ կատարուի Տէրոջմէն
ըսուածը՝ մարգարէին ձեռքովը, որ
23 կ'ըսէ · իգ Ահա՛ կոյսը պիտի յղանայ,
ու որդի պիտի ծնանի և անոր
անունը Էմմանուէլ պիտի կոչեն,
որ կը թարգմանուի՝ Աստուած մեզի
24 հետ ։ Եւ Յովսէփ քունէն արթ-
թըննալով՝ ինչպէս որ Տէրոջը հը-
րեշտակը իրեն հրամայեց, այնպէս
ըրաւ, ու իր կնիկը քովն առաւ.
25 Եւ չէր գիտէր զանիկայ, մինչև իր
իդ անդրանիկ որդին ծնաւ, ու անոր
անունը Յիսուս դրաւ ։

## ԳԼ · Բ

1 Արևելքէն մոգերը Քրիստոսին կ'երթան՝ աստղի մը առաջնորդութեամբը · 11 և երկրպագութիւն կ'ընեն անոր, ու իրենց ընծաները կը մատուցանեն ։ 14 Յովսէփ առնելով Յիսուսը ու անոր մայրը՝ Եգիպտոս կը փախչի ։ 16 Հերովդէս մանր տղաքը սպաննել կու տայ · 20 անոր մահը · 23 Յիսուս Եգիպտոսէն կը տարուի Գալիլեայի Նազարէթ քաղաքը ·

1 Եւ ա երբոր Յիսուս ծնաւ Հրէաս-
տանի Բեթլէհէմին մէջ՝ Հե-
րովդէս թագաւորին օրերը, ահա

ա Ղուկ · գ · 23 ։
բ Սաղ · ճլբ · 11 ։ Ես · ժա · 1 ։ Երեմ · իգ · 5 ։ Գլ · իբ · 42 ։ Յովհ · է · 42 ։ Գործ · բ · 30 ։ ժգ · 23 ։ Հռովմ · ա · 3 ։
գ Ծն · ժբ · 3 ։ իբ · 18 ։ Գաղ · գ · 16 ։
դ Ծն · իա · 2 · 3 ։
ե Ծն · իե · 26 ։
զ Ծն · իթ · 35 ։
է Ծն · լը · 27 ։
ը Հռութ · դ · 18 ։ Ա Մն · բ · 5 · 9 ։
թ Ա Թագ · ժզ · 1 ։ ժէ · 12 ։
ժ Բ Թագ · ժբ · 24 ։
ժա Գ Մն · դ · 10 ։
ժբ Դ Թագ · ի · 21 ։ Ա Մն · գ · 13 ։
ժգ Տես Ա Մն · գ · 15 · 16 ։
ժդ Դ Թագ · իդ · 14 · 15 · 16 ։ իե · 11 ։ Բ Մն · լզ · 10 ։ 20 ։ Երեմ · իէ · 20 ։ լթ · 9 ։ ծբ · 11 · 15 · 28 · 29 · 30 ։ Դան · ա · 2 ։
ժե Ա Մն · գ · 17 · 19 ։
ժզ Եզր · գ · 2 ։ ե · 2 ։ Նեեմ · ժբ · 1 ։ Անգ · ա · 1 ։

Սովորական եղած Փրկչի թուականէն հինգ տարի առաջ ։
ժէ Ղուկ · ա · 27 ։
ժը Ղուկ · ա · 35 ։
ժթ Բ Օր · իդ · 1 ։
ի Ղուկ · ա · 35 ։
իա Ղուկ · ա 31 ։
* Փրկիչ ։
իբ Գործ · դ · 12 ։ ե · 31 ։ ժգ · 23 · 38 ։
իգ Ես · է · 14
իդ Ել · ժգ · 2 ։ Ղուկ · բ · 7 · 21 ։

Չորս տարի առաջ՝ յիշեալ թուականէն ։
ա Ղուկ · բ 4 · 6 · 7 ։

Չորս տարի առաջ յի-
շեալ թուա-
կանէն ։

բ Ծն. ժ. 30։
իե. 6։ գ
Թագ. դ.
30։
գ Ղու. բ. 11։
դ Թու. իդ.
17։ Ես. Ե.
3։
ե բ Մն. լզ.
14։
զ բ Մն. լդ.
13։
է Մաղ. բ. 7։

ը Միք. Ե. 2։
Յով. է. 42։

թ Յայտ. բ.
27։

ժ Սաղ. հբ.
10։ Ես. կ.
6։

է Գղ. ա. 20։

ւ Ովս. ժա.
1։

Ծարևելքէն մոգեր եկան Երուսաղէմ,
2 Ու ըսին. գՈ՞ւր տեղ է ան՝ որ Հը-
րէաներուն՝ թագաւոր ծնաւ. ինչու
որ մենք արևելքի մէջ դ անոր աստղը
տեսանք, ու եկանք անոր երկրպա-
3 գութիւն ընելու ։ Ու երբոր Հե-
րովդէս թագաւորը լսեց. խռովե-
ցաւ, և բոլոր Երուսաղէմը իրեն
4 հետ. Եւ ժողվելով բոլոր եքա-
հանայապետները ու ժողովուրդին
դպիրները, ե հարցուց անոնց՝ թէ
Քրիստոսը ո՞ւր պիտի ծնանի ։
5 Անոնք ալ իրեն ըսին. Հրէաստանի
Բեթլէհէմին մէջ. ինչու որ ասանկ
գրուած է՝ մարգարէին ձեռքովը.
6 ըԵւ դուն Բեթլէհէմ՝ Յուդայի
երկիրը, Յուդայի իշխաններուն
մէջ բնաւ պզտիկ մը չես. ինչու որ
քեզմէ իշխան մը պիտի ելլէ ինծի.
Բոր իմ Իսրայէլ ժողովուրդս պի-
7 տի հովուէ ։ Ան ատենը Հերովդէս
ծածկաբար մոգերը կանչեց, ու ա-
ղէկ մը ստուգեց անոնցմէ աստղին
8 երևցած ատենը. Եւ զանոնք Բեթ-
լէհէմ խրկելով՝ ըսաւ. Գացէք
ստոյգը իմացէք ան մանուկին վրա-
յով, ու երբոր գտնէք, ինծի ի-
մացուցէք, որ ես ալ գամ՝ անոր
9 երկրպագութիւն ընեմ ։ Ու երբոր
անոնք թագաւորէն ասանկ լսե-
ցին, գացին. և ահա ան աստղը՝
որ արևելքի մէջ տեսեր էին, անոնց
առջևէն գնաց, մինչև որ եկաւ կե-
ցաւ մանուկին եղած տեղին վրայ ։
10 Երբոր տեսան աստղը, շատ մեծ
11 ուրախութիւնով ուրախացան ։ Եւ
տունը մտնելով, տեսան մանուկը
իր մօրը Մարիամին հետ, ու ինկան
երկրպագութիւն ըրին անոր. և ի-
րենց գանձերը բանալով՝ ժընծաներ
տուին անոր. ոսկի ու կնդրուկ և
12 զմուռս ։ Ու հրաման առնելով
էերազի մէջ՝ որ նորէն Հերովդէսին
չդառնան, ուրիշ ճամբով գացին
իրենց երկիրը ։
13 Ու երբոր անկէ գացին անոնք,
ահա Տէրոջը հրեշտակը երազի մէջ
երևցաւ Յովսէփին՝ ու ըսաւ. Ե-
լի՛ր առ մանուկը ու անոր մայրը.
ու Եգիպտոս փախիր, և հո՛ն կեցիր
մինչև որ ես քեզի ըսեմ. քանզի
Հերովդէս պիտի փնտռէ ան մա-
14 նուկը՝ կորսընցընելու համար ։ Ան
ալ ելաւ, մանուկը ու անոր մայրը
գիշերով առաւ, և գնաց Եգիպ-
տոս. ու մինչև Հերովդէսին մահը
15 հոն էր ։ Որ կատարուի Տէրոջմէն
ըսուածը մարգարէին ձեռքովը, որ
կ՚ըսէ. ւԵգիպտոսէն կանչեցի իմ
որդիս ։
16 Ան ատենը երբոր տեսաւ Հե-
րովդէս թէ խաբուեցաւ մոգերէն,
սաստիկ սրդողեցաւ, ու խրկեց

ջարդեց Բեթլէհէմի և անոր ամէն
սահմաններուն մէջ գտնուած բոլոր
մանր տղաքը՝ երկու տարուընէն
վար, ան ժամանակին համեմատ՝
17 որ մոգերէն ստուգեց ։ Ան ատենը
կատարուեցաւ Երեմիա մարգարէին
ձեռքով ըսուածը, որ կ՚ըսէ.
18 ԽՌամայի մէջ ձայն մը լսուեցաւ,
ողբ լաց ու մեծ կոծ. Ռաքէլ կու
լար իր տղոցը համար ու չէր ու-
զեր մխիթարուիլ. ինչու որ չը-
կային ։
19 Ու երբոր Հերովդէս մեռաւ ա-
հա Տէրոջը հրեշտակը Եգիպտոս ե-
20 րազի մէջ Յովսէփին երևցաւ, Ու
ըսաւ. Ելի՛ր առ մանուկը ու անոր
մայրը, և գնա Իսրայէլի երկիրը,
քանզի մեռան անոնք՝ որ մանուկին
21 կեանքը կը փնտռէին ։ Ան ալ ե-
լաւ՝ մանուկը ու անոր մայրը ա-
ռաւ, և եկաւ Իսրայէլի երկիրը ։
22 Իսկ երբոր լսեց՝ թէ Արքեղայոս
թագաւորեց Հրէաստանի վրայ իր
հօրը Հերովդէսին տեղը վախցաւ
հոն երթալու. ու երազի մէջ հրա-
ման առնելով՝ ծԳալիլեայի կողմե-
23 րը գնաց. Եւ եկաւ Նազարէթ
ըսուած քաղաքը բնակեցաւ որ
մարգարէներուն խօսքը կատարուի՝
թէ Նազովրեցի պիտի կոչուի ։

## ԳԼ. Գ

1 Յովհաննէսին քարոզութիւնը. պաշտօնը. վարքը և մկրտութիւնը ։ 7 Յովհաննէս կը յանդիմանէ փարիսեցիները. 13 և կը մկրտէ զՔրիստոս Յորդանանու մէջ ։

1 Ան օրերը ա Յովհաննէս մկրտիչը ե-
կաւ, բ ու Հրէաստանի անապա-
2 տին մէջ կը քարոզէր. Ու կ՚ըսէր.
Ապաշխարեցէք ինչու որ գ երկնից
թագաւորութիւնը մօտեցած է ։
3 Վասն զի ասիկայ ան է՝ որուն հա-
մար Եսայի մարգարէին ձեռքով
ըսուեցաւ որ կ՚ըսէ. դ Անապատի
մէջ կանչողին ձայնը. ե Տէրոջը ճամ-
բան պատրաստեցէք. անոր շաւիղ-
4 ները շիտկեցէք ։ Եւ աս զ Յով-
հաննէսը իր հանդերձը է ուղտի մա-
զէ ու իր մէջքը կաշիէ գօտի ու-
նէր. և իր կերակուրը՝ ըմարախ ու
5 թ վայրենի մեղր էր ։ ժ Ան ատենը
Երուսաղէմ և բոլոր Հրէաստան ու
Յորդանանու բոլոր կողմերը իրեն
6 կ՚ելլէին. Եւ կը մկրտուէին իրմէն
Յորդանանու մէջ. ու ի իրենց մեղ-
7 քերը կը խոստովանէին ։ Ու երբոր
տեսաւ փարիսեցիներէն ու սադու-
կեցիներէն շատերը իր մկրտութեա-
նը եկած. ըսաւ անոնց. ւ Իժերու
ծնունդներ. ո՞վ իմացուց ձեզի
ի գալու բարկութենէն փախչիլ ։
8 Ուրեմն ապաշխարութեան արժա-
9 նաւոր պտուղ բերէք ։ Եւ մի
խորհիք դուք ձեր ներսի դին ըսել

Չորս տարի առաջ յի-
շեալ թուա-
կանէն ։

Խ Երեմ. լա.
15։

Իրեք տարի առաջ յի-
շեալ թուա-
կանէն ։

ծ Գղ. գ. 13։
Ղու. բ. 39։
| Յով. ա. 45։

ա Մար. ա.
4. 15։ Ղու.
դ. 2, 3։
Յով. ա. 28։
բ Յես. ժդ.
10։
գ Դան. բ.
44։ Գղ. դ.
17։ ժ. 7։
Սովորական
թուական.
Յամի Տեառն
26
դ Ես. խ. 3։
Մար. ա. 3։
Ղու. գ. 4։
Յով. ա. 23։
ե Ղու. ա.
76։
զ Մար. ա. 6։
է դ Թագ. ա.
8. Զաք.
ժգ. 4։
ը Ղև. ժա.
22։
թ ա Թագ.
ժդ. 25. 26։
ժ Մար. ա.
5։ Ղու. գ.
7. Գոր.
ժթ. 4։
ի Գոր. ժթ.
18։
ւ Գղ. ժբ.
34։ իգ. 33։
Ղու. գ. 7.
Տ. 9։
ի Հռովմ. Ե. 9։
ա Թես. ա.
10։

Յամ. Տեառն 26

ծ Յօհ. ը. 33. 39. Գոր. ժգ. 26. Հռով. դ. 1. 11. 16.
է Գղ. ե. 19. Ղու. ժգ. 7. 9. Յօհ. ժե. 6.
ն Մար. ա. 8. Ղու. գ. 16. Յօհ. ա. 15. 26. 33. Գոր. ա. 5. ժա. 16. ժթ. 4.
յ Եսա. գ. 4. խդ. 3. Մաղ. գ. 2. Գոր. բ. 3. 4. ա Կոր. ժբ. 13.
ղ Տես Մաղ. գ. 3.
Յա. Տ. 27
ջ Մաղ. դ. 1. Գղ. ժգ. 30.
ս Մար. ա. 9. Ղու. գ. 21.
ո Գղ. բ. 22.
չ Մար. ա. 10.
պ Եսա. ժա. 2. խբ. 1. Ղու. գ. 22. Յօհ. ա. 32. 33.
ռ Յօհ. ժբ. 28.
ս Սաղ. բ. 7. Եսա. խբ. 1. Գղ. ժբ. 18. ժէ. 5. Մար. ա. 11. Ղու. թ. 35. Եփե. ա. 6. Կող. ա. 13. բ Պետ. ա. 17.

թէ. ծ Մենք մեր հայր՝ Աբրա-
համը ունինք. քանզի կ'ըսեմ
ձեզի, որ Աստուած կարող է աս
քարերէս Աբրահամին որդիներ հա-
10 նելու։ Ալ հիմա կացինը ծառե-
րուն արմատին քովը կը դրուի.
ուստի է ամէն ծառ որ բարի պտուղ
չբերեր, կը կտրուի ու կրակը կը
11 ձգուի։ ն Ես ձեզ ջրով կը մկըր-
տեմ ապաշխարութեան համար,
բայց իմ ետեւէս եկողը ինծմէ զօ-
րաւոր է, ու ես անոր կօշիկները
կրելու արժանի չեմ. յանիկայ ձեզ
պիտի մկրտէ Հոգւով Սրբով ու
12 կրակով. ղՈրուն հեծանոցը իր
ձեռքն է, և իր կալը պիտի մաքրէ՝
ու իր ցորենը համբարը պիտի ժող-
վէ, և յարդը չմարելու կրակով
պիտի այրէ։
13 ջԱն ատենը Յիսուս ոԳալիլեայէն
Յորդանան եկաւ Յովհաննէսին,
14 որ անկէ մկրտուի։ Եւ Յովհան-
նէս կ'արգիլէր անիկայ՝ ու կ'ըսէր.
Ինծի պէտք է որ քեզմէ մկրտուիմ,
15 ու դուն ինծի՞ կու գաս։ Յիսուս
պատասխան տուաւ ու ըսաւ անոր.
Թող տուր հիմա. ինչու որ այս-
պէս կը վայելէ մեզի որ բոլոր ար-
դարութիւնը կատարենք. ետքը
16 թող տուաւ անոր։ չՈւ երբոր
Յիսուս մկրտուեցաւ, շուտ մը
ջուրէն դուրս ելաւ, և ահա՛ երկին-
քը անոր բացուեցաւ, ու տեսաւ
պԱստուծոյ Հոգին որ աղաւնիի պէս
կ'իջնէր, ու կու գար իր վրայ։
17 ռԵւ ահա՛ երկինքէն ձայն մը եկաւ՝
որ կ'ըսէր. սԱսիկա՛ է իմ սիրելի
Որդիս, որուն հաւներ եմ։

ԳԼ. Դ

1 Քրիստոս ամ կըպահէ ու կը փորձուի։ 11 Հրեշտակները անոր սպասաւորութիւն կ'ընեն։ 13 Քրիստոս Կափառնայումի մէջ կը բնակի. 17 կը սկսի քարոզել. 18 կը կանչէ Պետրոսը ու Անդրէասը. 21 Յակոբոսը և Յովհաննէսը, 23 ու կը բժշկէ բոլոր հիւանդները։

ա Մար. ա. 12. Ղու. դ. 1.
բ Տես գ Թագ. ժը. 12. Եզեկ. դ. 14. ը. 3. ժա. 1. 24. խ. 2. խգ. 5. Գոր. ը. 39.
գ Եբ Օր. ը. 3.

1 Ան ատենը աՅիսուս անապատը
տարուեցաւ Սուրբ բՀոգիէն՝ որ
2 Սատանայէն փորձուի. Եւ քառ-
սուն ցորեկ ու քառսուն գիշեր ծոմ
պահելէն ետքը՝ անօթեցաւ։
3 Եւ փորձողը անոր մօտենալով՝
ըսաւ. Թէ որ դուն Աստուծոյ Որ-
դին ես, ըսէ՛ որ աս քարերը հաց
4 ըլլան։ Անիկայ պատասխան տուաւ՝
ու ըսաւ. Գրուած է թէ, գՈ՛չ
միայն հացով կ'ապրի մարդ, հա-
պա ան ամէն խօսքով որ Աստուծոյ
բերնէն կ'ելլէ։
5 Ան ատենը Սատանան առաւ
տարաւ զանիկայ դսուրբ քաղաքը,
և կայնեցուց զանիկայ տաճարին
6 աշտարակին վրայ, Ու ըսաւ անոր.
Թէ որ դուն Աստուծոյ Որդին ես,

դ Նեեմ. ժա. 1. 18 Եսա. խը. 2. ծբ. 1. Գղ. իէ. 53. Յայտ. ժա. 2.

քեզ աւնէ վա՛ր ձգէ. ինչու որ
գրուած է թէ՝ եԻր հրեշտակներուն
պիտի ապսպրէ քեզի համար. ու
ձեռքերնուն վրայ պիտի վերցընեն
քեզ, որ չըլլայ թէ ոտքդ քարի
7 զարնես։ Յիսուս ըսաւ անոր.
Դարձեալ գրուած է. թէ՝ զՔու
Տէր Աստուածդ չփորձես։
8 Սատանան Նորէն առաւ հանեց
զանիկայ խիստ բարձր լեռան մը
վրայ, և ցուցուց անոր աշխարհի
բոլոր թագաւորութիւնները ու ա-
9 նոնց փառքը. Ու ըսաւ անոր.
Ասոնք ամէնը քեզի կու տամ, թէ
որ իյնաս՝ ինծի երկրպագութիւն
10 ընես։ Ան ատենը Յիսուս ըսաւ
անոր. Ետի՛ս գնա՝ Սատանայ.
ինչու որ գրուած է թէ՝ էՔու Տէր
Աստուծոյդ երկրպագութիւն ընես,
11 ու միայն զանիկայ պաշտես։ Ան
ատենը Սատանան զանիկայ թո-
ղուց. և ահա՛ ըՀրեշտակներ եկան
ու իրեն սպասաւորութիւն կ'ընէ-
ին։
12 թԵւ ժերբոր լսեց Յիսուս թէ Յով-
հաննէս մատնուեցաւ, ելաւ գնաց
13 Գալիլեա. Ու ձգելով Նազարէ-
թը, եկաւ բնակեցաւ Կափառ-
նայում՝ ծովեզերեայ քաղաքը, Զա-
բուղոնի ու Նեփթաղիմի սահման-
14 ներուն մէջ. Որ կատարուի Եսայի
մարգարէին ձեռքով ըսուած խօս-
15 քը. ծԶաբուղոնի երկիրը ու Նեփ-
թաղիմի երկիրը, ծովու ճամբով
Յորդանանու անդիի կողմը, Հե-
16 թանոսաց Գալիլեան. կԽաւարի
մէջ նստող ժողովուրդը մեծ լոյս
տեսաւ, և լոյս ծագեցաւ անոնց՝ որ
մահուան երկրին ու շուքին մէջ կը
17 նստէին։ լԱնկէ ետև Յիսուս սկը-
սաւ քարոզել ու ըսել. խԱպաշ-
խարեցէ՛ք, ինչու որ երկնից
թագաւորութիւնը մօտ է։
18 ծԵրբոր Յիսուս Գալիլեացւոց
ծովուն քովերը կը պտըտէր, տե-
սաւ երկու եղբայրներ՝ կՊետրոս կո-
չուած Սիմոնը, և անոր եղբայրը
Անդրէասը՝ ծովը ուռկան ձգած,
19 ինչու որ ձկնորս էին. Եւ ըսաւ
անոնց. Իմ ետեւէս եկէք, ու հձեզ
20 մարդոց որսորդ ընեմ։ ձԱնոնք
ալ շուտ մը ուռկանները թողու-
ցին, ու անոր ետեւէն գացին։
21 ղԵւ անկէ յառաջ երթալով՝ տեսաւ
ուրիշ երկու եղբայրներ, Զեբե-
դեան Յակոբոսը ու անոր եղբայրը
Յովհաննէսը նաւին մէջ իրենց հօ-
րը Զեբեդէոսին հետ, երբ իրենց
ուռկանները կը կարկըտէին. ու
22 կանչեց զանոնք։ Անոնք ալ շուտ
մը նաւը ու հայրերնին թողուցին,
ու անոր ետեւէն գացին։
23 Եւ Յիսուս բոլոր Գալիլեան

Յամ. Տեառն 27

ե Սաղ. ղա. 11. 12.
զ Բ Օր. զ. 16.
է Բ Օր. զ. 13. ժ. 20. Յես. իդ. 14. ա Թագ. է. 3.
ը Եբր. ա. 14.
Յա. Տ. 30
թ Մար. ա. 14. Ղու. գ. 20. դ. 14. 31. Յօհ. դ. 43.
Յա. Տ. 31
ծ Եսա. թ. 1. 2.
կ Եսա. խբ. 7. Ղու. բ. 32.
լ Մար. ա. 14. 15.
խ Գղ. գ. 2. ժ. 7.
ծ Մար. ա. 16. 17. 18. Ղու. ե. 2.
կ Յօհ. ա. 42.
հ Ղու. ե. 10. 11.
ձ Մար. ժ. 28. Ղու. ժը. 28.
ղ Մար. ա. 19. Ղու. ե. 10.

Ցամ Տեառն
31

ᵉ Գլ. Թ. 35։ Մար. ա. 21, 39։ Ղու. դ. 15, 45։
ᶠ Գլ. ժդ. 14։ Մար. ա. 14։
ᵍ Մար. ա. 34։
ʰ Մար. գ. 7։

ⁱ Մար. գ. 13, 20։
ʲ Ղու. զ. 20։ Տե՛ս Սաղ. ծա. 17։ Առակ. ժզ. 19։ իթ. 23։ Ես. ծէ. 15։ կզ. 2։
ᵏ Ես. կա. 2, 3։ Ղու. զ. 21։ Յով. ժզ. 20։ բ Կոր. ա. 7։ Յայտ. իա. 4։
ˡ Սաղ. լէ. 11։
ᵐ Տե՛ս Հռով. գ. 13։
ⁿ Ես. ծե. 1։ կե. 13։
ᵒ Սաղ. խա. 1։ Գլ. զ. 14։ Մար. ժա. 25։ բ Տիմ. ա. 16։ Եբր. զ. 10։ Յակ. բ. 13։
ᵖ Սաղ. ժե. 2։ իդ. 4։ Եբր. ժբ. 14։
ᑫ ա Կոր. ժգ. 12։ ա Յով. գ. 2, 3։
ʳ բ Կոր. դ. 17։ բ Տիմ. բ. 12։ ա Պետ. գ. 14։
ˢ Ղու. զ. 22։ ա Պետ. դ. 14։
ᵗ Ղու. զ. 23։ Գործ. ե. 41։ Հռով. ե. 3։ Յակ. ա. 2։ ա Պետ. դ. 13։
ᵘ Նեեմ. Թ. 26։ բ Մն. լզ. 16։ Գլ. իգ. 34, 37։ Գործ. է. 52։ ա Թես. բ. 15։
ᵛ Մար. Թ. 49։ Ղու. ժդ. 34, 35։

պտըտելով, ᵉկը սորվեցընէր անոնց
ժողովարաններուն մէջ, և ᶠարքա-
յութեան աւետարանը կը քարո-
զէր, ու ᵍժողովուրդին մէջի ամէն
կերպ հիւանդութիւնները ու ամէն
24 կերպ ցաւերը կը բժշկէր ։ Եւ ա-
նոր համբաւը բոլոր Սուրիան տա-
րածուեցաւ, և բերին անոր՝ բոլոր
հիւանդները որ կերպ կերպ ցաւե-
րով ու տանջանքներով կը նեղուէ-
ին, և դիւահարները ու լուսնոտ-
ները և անդամալոյծները. ու բը-
25 ժշկեց զանոնք ։ Եւ ʰշատ ժողո-
վուրդներ անոր ետևէն կ'երթային՝
Գալիլեայէն ու Դեկապոլիսէն, և
Երուսաղէմէն, ու Հրէաստանէն,
և Յորդանանու անդիի կողմէն ։

## ԳԼ. Ե

1 Քրիստոս կը սկսի իր քարոզութիւնը լեռանը վրայ. 3 և կ'իմացընէ թէ որոնք են երանելիները. 13 իր աշակերտները կ'անուանէ երկրի աղ. 14 աշխարհի լոյս, լեռան վրայ կեցած քաղաք. 17 կը յայտնէ թէ ինքը եկաւ օրէնքը կատարելու. 21 կը բացատրէ թէ ինչ է սպանութիւն ընելը, 27 շնութիւն ընելը, 33 երդում ընելը. 38 կը յորդորէ չարին հակառակ չկենալ. 44 մինչև անգամ թշնամիները սիրել, 48 և կատարեալ ըլլալու ջանք ընել ։

1 Եւ ⁱտեսնելով ժողովուրդները՝
լեռը ելաւ. ու երբոր նստաւ
հոն, իր աշակերտները քովը գա-
2 ցին. Եւ իր բերանը բանալով
կը սորվեցընէր անոնց, ու կ'ըսէր.
3 ʲԵրանի՜ հոգւով աղքատներուն,
ինչու որ երկնից թագաւորութիւնը
4 անոնցն է ։ ᵏԵրանի՜ սգաւորնե-
րուն, ինչու որ անոնք պիտի մխի-
5 թարուին ։ ˡԵրանի՜ հեզերուն,
ինչու որ ᵐանոնք պիտի ժառանգեն
6 երկիրը ։ Երանի՜ անոնց՝ որ անօ-
թի ու ծարաւ են արդարութեան,
ինչու որ ⁿանոնք պիտի կշտանան ։
7 ᵒԵրանի՜ ողորմածներուն, ինչու որ
անոնք ողորմութիւն պիտի գտնեն ։
8 ᵖԵրանի՜ անոնց՝ որ սրտով մաքուր
են, ինչու որ ᑫանոնք պիտի տեսնեն
9 զԱստուած ։ Երանի՜ խաղաղու-
թիւն ընողներուն, ինչու որ անոնք
Աստուծոյ որդիներ պիտի կոչուին ։
10 ʳԵրանի՜ անոնց՝ որ հալածուած են
արդարութեան համար, ինչու որ
երկնից թագաւորութիւնը անոնցն
11 է ։ ˢԵրանի՜ է ձեզի՝ երբոր կը
նախատեն ձեզ ու կը հալածեն, և
սուտ տեղը ամէն կերպ չարաչար խօսքեր
կը խօսին վրանիդ՝ ինծի համար.
12 ᵗՑնծացէ՛ք և ուրա՛խ եղէք, ինչու
որ ձեր վարձքը շատ է երկինքը.
քանզի աս կերպով հալածեցին
ձեզմէ առաջ եղած մարգարէները ։
13 ᵘԴուք էք երկրի աղը. ᵛհապա
թէ որ աղը իր համը կորսընցընէ,
ինքը ինչո՞վ պիտի աղուի. անկէ
ետև բանի մը չգար, միայն թէ

դուրս ձգուելու և մարդոց ոտքին
14 տակը կոխուելու ։ ʷԴուք էք աշ-
խարհի լոյսը. քաղաք մը՝ որ լեռան
վրայ կեցած է, չկրնար պահուիլ ։
15 Ու ˣճրագը չեն վառեր և դներ գը-
րուանի տակ, հապա աշտանակի
վրայ, և լոյս կու տայ բոլոր տանը
16 մէջ եղողներուն ։ Անանկ թող
լուսաւորէ ձեր լոյսը մարդոց առ-
ջին, ʸոր տեսնեն ձեր բարի գործ-
քերը, ու ᶻփառաւորեն ձեր Հայրը՝
որ երկինքն է ։
17 ᵃՄի՛ կարծէք թէ ես եկայ օրէնքը
կամ մարգարէները աւրելու. չե-
կայ աւրելու, հապա կատարելու ։
18 Քանզի ճշմարտապէս կ'ըսեմ ձեզի.
ᵇՄինչև որ երկինք ու երկիր անց-
նին, օրէնքէն յովտ մը՝ կամ նշա-
նագիր մը պիտի չանցնի, մինչև
19 որ բոլորն ալ կատարուի ։ ᶜՈւստի
ո՛վ որ աս ամենափոքր պատուի-
րանքներուն մէկը աւրէ, ու մարդոց
անանկ սորվեցընէ, անիկայ ամենա-
փոքր պիտի կոչուի երկնից թագա-
ւորութեանը մէջ. բայց ո՛վ որ
ընէ և սորվեցընէ, անիկայ մեծ պի-
տի կոչուի երկնից թագաւորու-
20 թեանը մէջ ։ Քանզի կ'ըսեմ
ձեզի. Թէ որ ձեր արդարութիւնը
ᵈդպիրներուն ու փարիսեցիներուն
արդարութենէն աւելի չըլլայ, բնաւ
պիտի չմտնէք երկնից թագաւո-
րութիւնը ։
21 Լսեր էք որ ըսուեցաւ առաջին-
ներուն. ᵉՍպանութիւն մի՛ ըներ.
և ո՛վ որ սպանութիւն ընէ, դա-
տաստանի պարտաւոր պիտի ըլլայ ։
22 Բայց ես ձեզի կ'ըսեմ. Ո՛վ որ
իր եղբօրը պարապ տեղը ᶠսրդողի,
դատաստանի պարտաւոր պիտի ըլ-
լայ. և ո՛վ որ իր եղբօրը Ցի՛մար
ըսէ, ատեանի պարտաւոր պիտի
ըլլայ. և ո՛վ որ իր եղբօրը Անմիտ
ըսէ, դեհենի կրակին պարտաւոր
23 պիտի ըլլայ ։ Ուրեմն ᵍթէ որ քու
ընծադ սեղանին վրայ բերես, ու
հոն միտքդ գայ՝ թէ քու եղբայրդ
24 քեզի դէմ բան մը ունի, ʰհո՛ն
ձգէ՛ քու ընծադ սեղանին առջևը,
և գնա՛ առաջ եղբօրդ հետ հաշ-
տուէ, ու ետքը եկուր որ քու
25 ընծադ մատուցանես ։ ⁱՔու ոսո-
խիդ հետ շուտով միաբանէ՛, քանի
որ անոր հետ ճամբուն մէջն ես.
չըլլայ որ քու ոսոխդ քեզ դատա-
ւորին մատնէ, և դատաւորը դա-
26 հիճին, և բանտը ձգուիս ։ Ճշմա-
րիտ կ'ըսեմ քեզի, պիտի չելլես
անկէ, մինչև որ վերջին նաքարակի-
տը չվճարես ։
27 Լսեր էք որ ըսուեցաւ. ʲՇնու-
28 թիւն մի՛ ըներ ։ Բայց ես ձեզի
կ'ըսեմ. ᵏՈ՛վ որ կնիկ մարդու կը

Ցամ Տեառն
31

ʷ Առակ. դ. 18։ Փիլ. բ. 15։
ˣ Մար. դ. 21։ Ղու. ը. 16։ ժա. 33։
ʸ ա Պետ. բ. 12։
ᶻ Յով. ժե. 8։ ա Կոր. ժդ. 25։
ᵃ Հռով. գ. 31։ ժ. 4։ Գաղ. գ. 24։
ᵇ Ղու. ժզ. 17։
ᶜ Յակ. բ. 10։

ᵈ Հռով. Թ. 31։ ժ. 3։

ᵉ Ել. ի. 13։ բ Օր. ե. 17։
ᶠ ա Յով. գ. 15։

ᵍ Գլ. ը. 4։ իգ. 19։
ʰ Գլ. ժը. 19։ ա Տիմ. բ. 8։ ա Պետ. գ. 7։
ⁱ Առակ. իե. 8։ Ղու. ժբ. 58, 59։

ʲ Ել. ի. 14։ բ Օր. ե. 18։
ᵏ Յոբ. լա. 1։ Առակ. զ. 25։ Տե՛ս Ծն. լդ. 2։ բ Թագ. ժա. 2։

Ցամ Տեառն 31

Գլ. ժը. 8. 9 : Մար. Թ. 46 :
Տե՛ս Գլ. ժԹ. 12 :
Հռով. Ը. 13 : Կոր. Թ. 27 :
Կող. Գ. 5 :
Օր. Իդ. 1 : Երեմ. Գ. 1 : Տե՛ս Գլ. ժԹ. 3 : Մար. Ժ. 2. Ա :
Գլ. ԺԹ. 9 : Ղու. ԺԶ. 18 : Հռով. Է. 3 : Կոր. Է. 10. 11 :
Գլ. Իդ. 16 :
Ել. Ի. 7 : Ղև. ԺԹ. 12 : Թուոց Լ. 2 : Բ Օր. Ե. 11 :
Բ Օր. Իդ. 23 :
Գլ. Իդ. 16. 18. 22 : Յակ. Ե. 12 :
Ես. Կզ. 1 :
Սաղ. Խր. 2. ԺԵ. 3 :
Կող. Դ. 6 : Յակ. Ե. 12 :
Ել. Իա. 24 : Ղև. Իդ. 20 : Բ Օր. ԺԹ. 21 :
Առակ. Ի. 22 : Իդ. 29 : Ղու. Զ. 29 : Հռով. ԺԲ. 17. 19 : Ա Կոր. Զ. 7 : Ա Թես. Ե. 15 : Ա Պետ. Գ. 9 :
Ես. Ծ. 6 : Ողբ. Գ. 30 :
Գլ. ԻԵ. 32 : Մար. ԺԵ. 21 :
Բ Օր. ԺԵ. 8. 10 : Ղու. Զ. 30. 35 :
Ղև. ԺԹ. 18 :
Բ Օր. Իգ. 6 : Սաղ. Խա. 10 :
Ղու. Զ. 27. 35 : Հռով. ԺԲ. 14. 20 :
Ղու. Իգ. 34 : Գործ. Է. 59 : Ա Կոր. Դ. 12. 13 : Ա Պետ. Բ. 23 : Գ. 9 :
Յոբ. Ի. 3 :

նայի անոր ցանկանալու համար ,
ալ անիկայ իր սրտին մէջ շնու-
29 թիւն ըրաւ անոր հետ ։ Արդ՝ թէ
որ քու աջ աչքդ քեզ կը գայ-
թակղեցընէ , հանէ՛ զանիկայ՝ ու
քեզմէ ձգէ , ինչու որ աղէկ է քեզի
որ անդամներուդ մէկը կորսուի ,
ու քու բոլոր մարմինդ դժոխքը
30 չձգուի ։ Եւ թէ որ աջ ձեռքդ
քեզ կը գայթակղեցընէ , կտրէ՛
զանիկայ՝ ու քեզմէ ձգէ՛ . ինչու որ
աղէկ է քեզի որ անդամներուդ մէ-
կը կորսուի , ու քու բոլոր մար-
31 մինդ դժոխքը չձգուի ։ Իրաւ
ըսուեցաւ թէ՝ Ո՛վ որ իր կնիկը
կ'արձակէ , թող անոր արձակման
32 թուղթ տայ . Բայց ես ձեզի կ'ըսեմ
թէ՝ Ո՛վ որ իր կնիկը կ'արձակէ
առանց պոռնկութեան պատճառի ,
ինքը պատճառ կ'ըլլայ անոր շնու-
թիւն ընելուն , և ո՛վ որ ան ար-
ձակուածը առնէ , շնութիւն կը
գործէ ,
33 Դարձեալ լսեր էք որ ըսուեցաւ
առաջիններուն . Սուտ երդում մի՛
ըներ , հապա ըրած երդումներդ
34 վճարէ՛ Տէրոջը ։ Բայց ես ձեզի
կ'ըսեմ . Ամենեւին երդում մի՛ ը-
նէք . ո՛չ երկինքի վրայ՝ որ Աստու-
35 ծոյ աթոռն է , Եւ ո՛չ երկրի վրայ՝
որ անոր ոտքերուն պատուանդանն
է , ո՛չ ալ Երուսաղէմի վրայ՝ որ
36 մեծ թագաւորին քաղաքն է . Եւ
ո՛չ քու գլխուդ վրայ երդում ընես ,
ինչու որ չես կրնար մէկ մազ մը
37 ճերմըկցընել կամ սեւցընել ։ Հա-
պա ձեր խօսքը ըլլայ այո՛՝ այո՛ , և
ո՛չը՝ ո՛չ . ու ասկէ աւելին՝ չարէն
յառաջ կու գայ ։
38 Լսեր էք որ ըսուեցաւ . Աչքի
տեղ՝ աչք . ու ակռայի տեղ՝ ակ-
39 ռայ ։ Բայց ես ձեզի կ'ըսեմ .
Չարին հակառակ մի՛ կենաք . Հա-
պա թէ որ մէկը ապտակ մը զարնէ
աջ ծնօտիդ՝ դարձուր անոր մէկալն
40 ալ ։ Եւ մէկը որ կ'ուզէ քեզի
հետ դատ վարել՝ ու քու շապիկդ
առնել , թո՛ղ տուր անոր քու վե-
41 րարկուդ ալ ։ Եւ ո՛վ որ քեզ
պանհակ բռնէ՝ ու մղոն մը ճամբայ
քշէ , գնա՛ անոր հետ երկուք ։
42 Քեզմէ ուզողին տո՛ւր , ու ըերես
մի՛ դարձըներ անկէ՝ որ կ'ուզէ
քեզմէ փոխ առնել ։
43 Լսեր էք որ ըսուեցաւ . Քու ըն-
կերդ սիրես , ու թշնամիդ ատես ։
44 Բայց ես ձեզի կ'ըսեմ . Սիրեցէ՛ք
ձեր թշնամիները . օրհնեցէ՛ք ձեզ
անիծողները . բարի՛ ըրէք անոնց՝
որ ձեզ կ'ատեն , և աղօ՛թք ըրէք
անոնց համար՝ որ ձեզ կը չարչրկեն
45 ու կը հալածեն . Որ ձեր երկնաւոր
Հօրը որդիքը ըլլաք . ինչու որ իր
արեւը կը ծագեցընէ թէ՝ չարերուն
և թէ բարիներուն վրայ , և անձրև
կը խրկէ թէ՝ արդարներուն և թէ
46 մեղաւորներուն վրայ ։ Վասն զի
թէ որ դուք ձեզ սիրողները սիրէք ,
ի՞նչ վարձք կ'ունենաք . չէ՞ որ
մաքսաւորներն ալ նոյնը կ'ընեն ։
47 Եւ թէ որ միայն ձեր եղբայրներուն
բարեւ տաք , ի՞նչ աւելի կ'ընէք
ուրիշներէն . չէ՞ որ մաքսաւորներն
48 ալ նոյնը կ'ընեն ։ Ուրեմն դուք
կատարեա՛լ եղէք՝ ինչպէս որ ձեր
երկնաւոր Հայրն ալ կատարեալ է ։

## ԳԼ. Զ

1 Քրիստոս կը շարունակէ իր քարոզութիւնը լեռանը վրայ , ու կը խօսի ողորմութեան , 5 աղօթք ընելու , 14 ուր եղբօրը յանցանքը ներելու , 16 ծոմ պահելու , 19 մեր գանձը ուր պահելու , 24 Աստուծոյ և մամոնայի ծառայութիւն ընելու վրայով 25 կը յորդորէ որ աշխարհային բաներու համար հոգ չընենք , 33 հապա Աստուծոյ թագաւորութիւնը խնդրենք ։

1 Զգո՛յշ եղէք որ ձեր ողորմու-
թիւնը մարդոց առջեւը չընէք՝
անոնց երեւնալու համար . եթէ ոչ՝
վարձք չէք առներ ձեր Հօրմէն՝ որ
2 երկինքն է ։ Ուստի երբոր ողոր-
մութիւն կ'ընես , առջեւդ փող մի՛
հնչեցըներ , ինչպէս որ կեղծաւոր-
ները ժողովարաններուն ու փողոց-
ներուն մէջ կ'ընեն , որ մարդոցմէ
փառաւորուին . Ճշմարիտ կ'ըսեմ
ձեզի , անոնք իրենց վարձքը առած
3 կ'ըլլան ։ Իսկ դուն երբոր ողորմու-
թիւն կ'ընես , ձախ ձեռքդ թող
չգիտնայ աջ ձեռքիդ ինչ գործելը .
4 Որ քու ողորմութիւնդ գաղտուկ
ըլլայ . և քու Հայրդ որ գաղտուկը
կը տեսնէ , քեզի յայտնապէս
հատուցում պիտի ընէ ։
5 Ու երբոր աղօթք կ'ընես , կեղ-
ծաւորներուն նման չըլլաս , որ կը
սիրեն ժողովարաններուն մէջ ու
հրապարակներուն անկիւնները կայ-
նելով՝ աղօթք ընել , որ մարդոց
երեւնան . Ճշմարիտ կ'ըսեմ ձեզի ,
անոնք իրենց վարձքը առած կ'ըլլան ։
6 Իսկ դուն երբոր աղօթք կ'ընես ,
մտի՛ր քու ներքին սենեակդ , ու
դուռդ գոցէ՛ , և աղօ՛թք ըրէ քու
Հօրդ՝ որ գաղտուկ տեղ է ծած-
կուած . և քու Հայրդ որ գաղտուկը
կը տեսնէ , քեզի յայտնապէս հա-
7 տուցում պիտի ընէ ։ Եւ երբոր
աղօթք կ'ընէք , հեթանոսներուն
պէս շատախօս մի՛ ըլլաք . Վասն զի
կը կարծեն թէ իրենց շատ խօսելուն
8 համար պիտի լսուին ։ Ուրեմն ա-
նոնց չնմանիք . ինչու որ ձեր Հայ-
րը ձեզի պէտք եղածը գիտէ՝ դեռ
9 դուք իրմէ չխնդրած ։ Ուստի ա-
սա՛նկ աղօթք ըրէք դուք .
Ո՛վ Հայր մեր՝ որ երկինքն ես ,
10 քու անունդ սուրբ ըլլայ . Քու

Ցամ Տեառն 31

Ղու. Զ. 32 :
Ծն. ԺԷ. 1 : Ղև. Ժա. 44 : ԺԹ. 2 : Ղու. Զ. 36 : Կող. Ա. 28 : Դ. 12 : Յակ. Ա. 4 : Ա Պետ. Ա. 15. 16 :
Եփե. Ե. 1 :
Բ Օր. Իդ. 13 : Սաղ. ԾԺԲ. 9 : Դան. Դ. 27 : Բ Կոր. Թ. 9. 10 :
Հռով. ԺԲ. 8 :
Ղու. ԺԴ. 14 :
Դ Թագ. Դ. 33 :
Ժող. Ե. 2 : Գ Թագ. ԺԸ. 26. 29 :
Ղու. ԺԱ. 2 :

Ցամ Տեառն 31

թագաւորութիւնդ գայ , Քու
կամքդ ըլլայ , ^ի ինչպէս որ երկինքը՝
11 անանկ ալ երկրիս վրայ . ^կ Մեր ամէն
12 աւուր հացը՝ այսօր մեզի տո՛ւր . Եւ
^է մեզի ների՛ր մեր պարտքերը , ինչպէս
որ մենք ալ կը ներենք մեր պարտա–
13 կաններուն . Ու ^ը մեզ փորձութեան
մի՛ տանիր . հապա Չարէն մեզ ա–
զատէ՛ . ^թ ինչու որ քուկդ է թա–
գաւորութիւնը և զօրութիւնը ու
փառքը յաւիտեանս . ամէն ։
14 ^ժ Վասն զի թէ որ դուք ներէք
մարդոց իրենց յանցանքները , ձեր
երկնաւոր Հայրն ալ ձեզի կը նե–
15 րէ . Հապա ^ի թէ որ դուք չներէք
մարդոց իրենց յանցանքները , ձեր
Հայրն ալ ձեզի չներեր ձեր յան–
ցանքները ։
16 Ու ^լ երբոր ծոմ կը պահէք , կեղ–
ծաւորներուն պէս տրտումերես մի՛
ըլլաք . քանզի իրենց երեսները
կ'աւրեն որ մարդոց երևնան թէ
ծոմ կը պահեն . Ճշմարիտ կ'ըսեմ
ձեզի , անոնք իրենց վարձքը առած
17 կ'ըլլան ։ Բայց դուն երբոր ծոմ
կը պահես , ^խ գլուխդ օծէ՛ , ու երեսդ
18 լուա՛ , Որ մարդոց ծոմ պահողի
պէս չերևնաս , հապա քու Հօրդ՝
որ գաղտուկ տեղ ^ծ կը գտնուի , և
քու Հայրդ որ գաղտուկը կը տես–
նէ , ^ծ քեզի հատուցում պիտի ընէ ։
19 ^կ Երկրի վրայ ձեզի գանձեր մի՛ դի–
զէք , ուր որ ցեցը ու ժանկը կ'ա–
պականեն , և ուր գողերը պատ կը
20 ծակեն ու կը գողնան . ^հ Հապա
ձեզի գանձեր դիզեցէք երկինքը ,
ուր որ ո՛չ ցեցը և ոչ ժանկը կ'ա–
պականէ , ու ոչ գողերը պատ կը
21 ծակեն և կը գողնան ։ Քանզի
ձեր գանձը ո՛ւր որ է , սիրտերնիդ
22 ալ հոն պիտի ըլլայ ։ ^ձ Մարմինին
ճրագը աչքն է . հապա թէ որ քու
աչքդ պայծառ է , բոլոր մարմինդ
23 լուսաւոր կ'ըլլայ . Բայց թէ որ քու
աչքդ վատ է , բոլոր մարմինդ մութ
կ'ըլլայ . ուրեմն թէ որ քու մէջդ
եղած լոյսը խաւար է , ^ղ ան խա–
24 ւարը ո՛րչափ է ։ ^ճ Մարդ մը չկրնար
երկու տէրոջ ծառայութիւն ընել .
ինչու որ կամ մէկը պիտի ատէ՛ և
միւսը սիրէ , կամ ^† մէկը պիտի մե–
ծարէ" և միւսը արհամարհէ . ^մ Չէք
կրնար ծառայել Աստուծոյ ու Մամո–
25 նայի ։ Ուստի կ'ըսեմ ձեզի . ^յ Հոգ
մի՛ ընէք ձեր կեանքին համար՝ թէ
ի՛նչ պիտի ուտէք , կամ ի՛նչ պիտի
խմէք . ո՛չ ալ ձեր մարմիններուն
համար , թէ ի՛նչ պիտի հագնիք .
չէ՞ որ կեանքը կերակուրէն աւելի է ,
26 ու մարմինը հագուստէն ։ ^ն Նայե–
ցէ՛ք երկնքի թռչուններուն , որ
ո՛չ կը սերմանեն և ո՛չ կը հնձեն և
ո՛չ ամբարի մէջ կը ժողվեն , ու
ձեր երկնաւոր Հայրը կը կերակրէ
զանոնք . չէ՞ որ դուք անոնցմէ ա–
27 ւելի լաւ էք ։ Հիմա ձեզմէ ո՞վ
կրնայ իր հոգ ընելովը իր հասակին
28 վրայ կանգուն մը աւելցնել ։ Ու
հագուստի համար ինչո՞ւ հոգ կ'ը–
նէք . Նայեցէք դաշտի շուշաննե–
րուն՝ ինչպէս կ'աճին . ո՛չ կ'աշ–
29 խատին և ո՛չ կը մանեն . Բայց
ձեզի կ'ըսեմ որ Սողոմոն ալ իր
բոլոր փառաւորութեանը մէջ ա–
նոնցմէ մէկուն պէս չհագուեցաւ ։
30 Ուստի թէ որ դաշտի խոտը որ այս–
օր կա՛յ և վաղը փուռը կը ձգուի ,
Աստուած անանկ կը հագուեցնէ ,
հապա ո՛րչափ աւելի ձեզ՝ թերա–
31 հաւատներ ։ Ուրեմն հոգ մի՛ ը–
նէք՝ ըսելով . Ի՞նչ պիտի ուտենք ,
կամ Ի՞նչ պիտի խմենք , կամ
32 Ի՞նչ պիտի հագնինք . (Ինչու որ
ատ բոլոր բաները հեթանոսները
կը խնդրեն .) վասն զի ձեր երկ–
նաւոր Հայրը գիտէ՝ թէ ատ բոլոր
33 բաները ձեզի պէտք են ։ Բայց
^պ առաջ խնդրեցէք Աստուծոյ թա–
գաւորութիւնը և անոր արդարու–
թիւնը , ու ատ բոլոր բաներն ալ
34 ձեզի պիտի տրուի ։ Ուստի վա–
ղուան համար հոգ մի՛ ընէք . ինչու
որ վաղուան օրը իրեն համար հոգ
պիտի ընէ . հերիք է օրուան՝ իր
նեղութիւնը ։

ԳԼ . Է

1 Քրիստոս իր քարոզութիւնը վերջացընելով կը յանդիմանէ անխոհեմաբար դատողութիւն ընելը . 6 կ'արգիլէ սուրբ բաները շուներուն տալը . 7 կը յորդորէ աղօթք ընել , 13 նեղ դռնէն ներս մտնել , 15 սուտ մարգարէներէն զգուշ կենալ , 21 իր խօսքը՝ միայն լսողներ չըլլալ՝ հապա կատարողներ , 24 նմանելով անանկ մարդու մը՝ որ իր տունը վէմի վրայ կը շինէ , 26 և ո՛չ թէ աւազի վրայ ։

1 ^ա Մի՛ դատէք՝ որ չդատուիք ։
2 Քանզի ինչ դատաստանով որ
դատէք , անով պիտի դատուիք . և
^բ ինչ չափով որ չափէք , անով պի–
3 տի չափուի ձեզի ։ ^գ Եւ ինչո՞ւ քու
եղբօրդ աչքին մէջի շիւղը կը տես–
նես , ու քու աչքիդ մէջի գերանին
4 չես նայիր ։ Կամ ի՞նչպէս կրնաս
ըսել քու եղբօրդ . Թող տուր
աչքէդ շիւղը հանեմ . և ահա քու
5 աչքիդ մէջը գերան կայ ։ Կե՛ղ–
ծաւոր՝ առաջ քու աչքէդ գերանը
հանէ՛ , ու ետքը պիտի նայիս եղ–
բօրդ աչքէն շիւղը հանելու ։
6 ^դ Սուրբ բանը շուներուն մի՛
տաք , և ձեր մարգարիտները խո–
զերուն առջևը մի՛ ձգէք , որ ոտքեր–
նուն տակը չկոխկըռտեն զանոնք ,
ու դառնան ձեզ փառատեն ։
7 ^ե Խնդրեցէ՛ք՝ և պիտի տրուի ձե–
զի . փնտռեցէ՛ք՝ և պիտի գտնէք .
^զ դուռը զարկէ՛ք՝ և պիտի բացուի

Ցամ Տեառն 31

^է Գլ . իզ . 39 , 42 ։ Գոր . իա . 14 ։
^ը Սաղ . ճգ . 20 , 21 ։
^թ Տե՛ս Ցոր . իգ . 12 ։ Առակ . լ . 8 ։
^ժ Գլ . ժը . 21 ։
^ի Գլ . իզ . 41 ։ Ղու . իբ . 40 , 46 ։ ա Կոր . ժ . 13 ։ բ Պետ . բ . 9 ։ Յայտ . գ . 10 ։
^լ Յօհ . ժէ . 15 ։
^խ ա Մն . իթ . 11 ։
^ծ Մար . ժա . 25 , 26 ։ Եփե . դ . 32 ։ Կող . գ . 13 ։
^կ Գլ . ժը . 35 ։ Յակ . բ . 13 ։
^հ Ես . ծը . 5 ։ Հռութ . գ . 3 ։ Դան . ժ . 3 ։
^ծ Ոմանք քեզի յայտնապէս
^կ Առակ . իգ . 4 ։ ա Տիմ . զ . 17 ։ Եբր . ժգ . 5 ։ Յակ . ե . 1 , եւ ։
^հ Գղ . ժթ . 21 ։ Ղու . ժբ . 33 , 34 ։ ժը . 22 ։ ա Տիմ . զ . 19 ։ ա Պետ . ա . 4 ։
^ձ Ղու . ժա . 34 , 36 ։
^ճ Ղու . ժզ . 18 ։
^† Կամ մէկուն պիտի յարի՝
^մ Գաղ . ա . 10 ։ ա Տիմ . զ . 17 ։ Յակ . դ . 4 ։ ա Յօհ . բ . 15 ։
^յ Սաղ . ծե . 22 ։ Ղու . ժբ . 22 , 23 ։ Փիլ . դ . 6 ։ ա Պետ . ե . 7 ։
^ն Յոբ . լթ . 41 ։ Սաղ . ճխէ . 9 ։ Ղու . ժբ . 24 , եւ ։
^պ Տե՛ս գ Թագ . գ . 13 ։ Սաղ . լէ . 25 ։ Մար . ժ . 30 ։ Ղու . ժը . 31 ։ ա Տիմ . դ . 8 ։
^ա Ղու . զ . 37 ։ Հռով . բ . 1 ։ ժդ . 3 , 4 , 10 , 13 ։ ա Կոր . դ . 3 , 5 ։ Յակ . դ . 11 , 12 ։
^բ Մար . դ . 24 ։ Ղու . զ . 38 ։
^գ Ղու . զ . 41 , 42 ։
^դ Առակ . թ . 7 , 8 ։ իգ . 9 ։ Գոր . ժգ . 45 , 46 ։
^ե Գլ . իա . 22 ։ Մար . ժա . 24 ։ Ղու . ժա . 9 , 10 ։ ժը . 1 ։ Յօհ . ժդ . 13 ։ ժե . 7 ։ ժզ . 23 , 24 ։ Յակ . ա . 5 , 6 ։ ա Յօհ . գ . 22 ։ ե . 14 , 15 ։

Ամ Տեառն
31

ա Առակ. ը. 17. Երեմ. իթ. 12. 13. բ Ղուկ. ժա. 11. 12. 13.
գ Ծն. ա. զ. 5. ը. 21.
դ Ղուկ. զ. 31. ե Ղև. ժթ. 18. Գղ. իբ. 40. Հռով. ժգ. 8. 9. 10. Գաղ. ե. 14. ա Տիմ. ա. 5.
է Ղուկ. ժգ. 24.
ը Բ Օր. ժգ. 3. Երեմ. իգ. 16. Գղ. իդ. 4. 5. 11. 24. Մար. ժգ. 22. Հռով. ժզ. 17. 18. Եփե. ե. 6. Կող. բ. 8. բ Պետ. բ. 1. 2. 3. ա Յով. դ. 1.
թ Միք. գ. 5. բ Տիմ. գ. 5.
ժ Գոր. ի. 29. 30.
ժա Հմր. 20. Գղ. ժբ. 33.
ժբ Ղուկ. գ. 43. 44.
ժգ Երեմ. ժա. 19. Գղ. ժբ. 33.
ժդ Գղ. գ. 10. Ղուկ. գ. 9. Յով. ժե. 2. 6.
ժե Ովս. ը. 2. Գղ. իե. 11. 12. Ղուկ. զ. 41. ժգ. 25. Գոր. ժթ. 13. Հռով. բ. 13. Յակ. ա. 22.
ժզ Թուե. իդ. 4. Յով. ժա. 51. ա Կոր. ժգ. 2.
ժէ Գղ. իե. 12. Ղուկ. ժգ. 25. 27. բ Տիմ. բ. 19.
ժը Սաղ. ե. 5. զ. 8. Գղ. իե. 41.
ժթ Ղուկ. զ. 47. Ճ.

8 ձեզի. Վասն զի ամէն ով որ կը
խնդրէ՝ կ'առնէ, և ով որ կը
փնտռէ՝ կը գտնէ, և ով որ դուռը
կը զարնէ՝ պիտի բացուի անոր։
9 ա Ձեզմէ ո՞ր մարդը կայ՝ որմէն իր
որդին հաց որ ուզէ, միթէ քա՞ր
10 պիտի տայ անոր. Եւ կամ թէ որ
ձուկ ուզէ, միթէ օ՞ձ պիտի տայ ա-
11 նոր։ Ուստի եթէ դուք՝ բ որ չար
էք, ձեր զաւակներուն աղէկ ընծա-
ներ տալ գիտէք, որչափ աւելի ձեր
Հայրը՝ որ երկինքն է, բարի բա-
ներ պիտի տայ անոնց՝ որ իրմէ կը
խնդրեն։
12 Ուստի դ ամէն ինչ որ կ'ուզէք՝ որ
մարդիկ ձեզի ընեն, դուք ալ ա-
նոնց անանկ ըրէք. քանզի ե աս է
օրէնքը ու մարգարէները։
13 է Նեղ դռնէն ներս մտէք. ինչու
որ լայն է այն դուռը՝ ու ընդարձակ
այն ճամբան, որ դէպ 'ի կորուստ
կը տանի. և շատուոր են անոնք՝ որ
14 անկէ կը մտնեն։ Ինչու որ նեղ է
այն դուռը՝ ու նեղուցք է այն ճամ-
բան, որ դէպ 'ի կեանք կը տանի.
և քիչուոր են անոնք՝ որ զանիկայ կը
գտնեն։
15 ը Զգո՛յշ կեցէք սուտ մարգարէ-
ներէն՝ թ որոնք ձեզի կու գան ոչխարի
հանդերձներով, բայց ներսէն յա-
16 փշտակող գայլեր են։ Իրենց պը-
տուղէն պիտի ճանչնաք զանոնք.
ժ միթէ փուշերէն խաղող կը քա-
ղե՞ն, կամ տատասկէն թուզ.
17 Ասանկ ալ ժա ամէն բարի ծառ՝ բարի
պտուղ կու տայ, և չար ծառ՝ չար
18 պտուղ կու տայ։ Բարի ծառը
չկրնար չար պտուղ տալ, ոչ ալ
19 չար ծառը բարի պտուղ տալ։ ժբ Ա-
մէն ծառ որ բարի պտուղ չտար՝ կը
կտրուի, ու կրակը կը ձգուի։
20 Ուրեմն իրենց պտուղէն պիտի
ճանչնաք զանոնք։
21 Ոչ թէ ամէն մէկը՝ որ ինծի
ժե Տէր Տէր կ'ըսէ, պիտի մտնէ երկ-
նից թագաւորութիւնը. հապա ա-
նիկայ որ իմ երկնաւոր Հօրս կամ-
22 քը կը կատարէ։ Շատերը այն
օրը ինծի պիտի ըսեն. Տէր Տէր՝
ժզ չէ՞ որ քու անունովդ մարգարէու-
թիւն ըրինք, և քու անունովդ
դևեր հանեցինք, ու քու անունովդ
23 շատ հրաշքներ ըրինք։ Եւ ժէ այն ա-
տենը անոնց յայտնապէս պիտի ը-
սեմ թէ, Ես բնաւ ձեզ չէի ճանչ-
նար. ժը մէկդի գացէք քովէս դուք
որ անօրէնութիւն կը գործէք։
24 Արդ՝ ժթ ով որ աս իմ խօսքերս կը
լսէ՝ ու կը կատարէ անոնք, զանի-
կայ պիտի նմանցընեմ խելացի մար-
դու մը՝ որ իր տունը վէմի վրայ
25 շինեց. Եւ անձրևները իջան, ու
գետերը վազեցին, ու հովերը փչե-
ցին, և զարկին այն տանը, ու
չփլաւ. ինչու որ վէմի վրայ հաս-
26 տատուած էր։ Եւ ով որ աս իմ
խօսքերս կը լսէ ու չկատարեր ա-
նոնք, կը նմանի անխելք մարդու
մը՝ որ իր տունը աւազի վրայ շինեց.
27 Եւ անձրևները իջան, ու գետերը
վազեցին, ու հովերը փչեցին, և
զարկին այն տանը, ու փլաւ, և մեծ
էր անոր կործանումը։
28 Ու երբոր Յիսուս լմնցուց աս
խօսքերը, ա ժողովուրդները կը զար-
մանային անոր վարդապետութեանը
29 վրայ. բ Ինչու որ իշխանութիւն ու-
նեցողի մը պէս կը սորվեցընէր ա-
նոնց, ու չէ թէ դպիրներուն պէս։

## ԳԼ. Ը

2 Քրիստոս կը մաքրէ բորոտը, 5 կը բժշկէ հարիւրապետին ծառան, 14 Պետրոսին զոքանչը, 16 և ուրիշ շատ հիւանդներ. 18 կը ցուցընէ թէ ինչ կերպով իր ետևէն երթալ պէտք է. 23 ծովուն ալեկոծութիւնը կը հանդարտեցընէ. 28 երկու դիւահարներէ դևերը կը հանէ, 31 և զանոնք կը թողու որ երթան խոզերուն մէջ մտնեն։

1 Ու երբոր այն լեռնէն վար իջաւ,
շատ ժողովուրդներ գացին ա-
2 նոր ետևէն։ ա Եւ ահա բորոտ մը
եկաւ, երկրպագութիւն կ'ընէր ա-
նոր՝ ու կ'ըսէր. Տէր՝ թէ որ ուզես,
3 կրնաս զիս մաքրել։ Եւ Յիսուս իր
ձեռքը երկընցընելով դպաւ անոր՝
ու ըսաւ. Կ'ուզեմ՝ մաքրուէ. և
շուտ մը անոր բորոտութիւնը մաք-
4 րուեցաւ։ Եւ Յիսուս ըսաւ անոր.
բ Զգո՛յշ կեցիր՝ մէկու մը չըսես.
հապա գնա քեզ քահանային ցու-
ցուր, և գ Մովսէսին պատուիրած
ընծան տո՛ւր, անոնց վկայութիւն
ըլլալու համար։
5 դ Ու երբոր Կափառնայում մտաւ,
հարիւրապետ մը եկաւ քովը, կ'ա-
6 ղաչէր անոր, Ու կ'ըսէր. Տէր՝ իմ
ծառաս տունը անդամալոյծ պառ-
7 կած չարաչար կը տանջուի։ Եւ
Յիսուս ըսաւ անոր. Ես կու գամ
8 ու զանիկայ կը բժշկեմ։ Եւ հա-
րիւրապետը պատասխան տալով
ըսաւ. Տէր՝ ե ես արժանի չեմ որ
դուն իմ յարկիս տակը մտնես.
զ միայն թէ խօսքով ըրուցէ, ու իմ
9 ծառաս պիտի բժշկուի. Ինչու որ
ես ալ իշխանութեան տակ մարդ
մըն եմ, ու իմ հրամանիս տակը
զինուորներ ունիմ. և ասոր կ'ը-
սեմ. Գնա, ու կ'երթայ. և մէ-
կալին՝ թէ Եկո՛ւր, ու կու գայ. և
ծառայիս՝ թէ Աս բանը ըրէ, ու
10 կ'ընէ։ Յիսուս երբոր լսեց՝ զար-
մացաւ, և իր ետևէն գացողներուն
ըսաւ. Ճշմարիտ կ'ըսեմ ձեզի,
Իսրայէլի մէջ անգամ ես այսչափ
11 հաւատք չգտայ։ Եւ ձեզի կ'ըսեմ
է որ արևելքէն ու արևմուտքէն շա-

Ամ Տեառն
31

ա Գղ. ժգ. 54. Մար. ա. 22. զ. 2. Ղուկ. դ. 32.
բ Յով. է. 46.

ա Մար. ա. 40. Ճ. Ղուկ. ե. 12. Ճ.

բ Գղ. թ. 30. Մար. ե. 43.
գ Ղև. ժդ. 3. 4. 10. Ղուկ. ե. 14.
դ Ղուկ. է. 1. Ճ.

ե Ղուկ. ժե. 19. 21.
զ Սաղ. ճէ. 20.

է Ծն. ժբ. 3. Ես. բ. 2. 3. ժա. 10. Մաղ. ա. 11. Ղուկ. ժգ. 29. Գոր. ժ. 45. ժա. 18. ժգ. 26. Հռով. ժե. 9. Ճ. Եփե. գ. 6.

Յամ Տեառն 31

ըԳղ . իա . 43 ։
ըԳղ . ժգ . 42 , 50 ։ իբ . 13 ։ իդ . 51 ։ իե . 30 ։ Ղու . ժգ . 28 ։ բ Պետ . բ . 17 ։ Յուդ . 13 ։

ծՄար . ա . 29 , 30 , 31 ։ Ղու . դ . 38 , եւ ։
էՏեսա Կոր . թ . 5 ։

ըՄար . ա . 32 , եւ ։ Ղու . դ . 41 , 42 ։

ԻԵս . ծգ . 4 ։ ա Պետ . բ . 24 ։

ծՂու . թ . 57 , 58 ։

ԼՂու . թ . 59 , 60 ։
ՀՏես գ Թագ . ժթ . 20 ։

ՃՄար . դ . 37 , եւ ։ Ղու . ը . 23 , եւ ։

ԺՕաղ . կե . 7 ։ ձթ . 9 ։ ճէ . 29 ։

ԾՄար . ե . 1 , եւ ։ Ղու . ը . 26 , եւ ։
* Ոմանք Գադարացւոց

տեր պիտի գան , ու երկնից Թա-
գաւորութեանը մէջ պիտի բազմին՝
Աբրահամին ու Իսահակին և Յա-
12 կոբին հետ . Իսկ Էթագաւորու-
թեանը որդիքը Ըդուրսի խաւարը
պիտի հանուին . հոն պիտի ըլլայ
13 լա՛լ ու ակռաներ կճռըցընել ։ Եւ
Յիսուս հարիւրապետին ըսաւ .
Գնա՛ , ու ինչպէս որ դուն հաւա-
տացիր , անանկ թող ըլլայ քեզի .
և նոյն ժամուն անոր ծառան բժըշ-
կուեցաւ ։
14 Եւ ծՅիսուս Պետրոսին տունը
գալով տեսաւ որ անոր էզոքանչը
1 ջերմէն բռնուած պառկած էր . Եւ
անոր ձեռքէն բռնեց , ու ջերմը
թող տուաւ զանիկայ . ան ալ
ոտքի վրայ ելաւ , և անոր սպասա-
ւորութիւն կ'ընէր ։
16 ըԵրբոր իրիկուն եղաւ , շատ
դիւահարներ բերին անոր , ու խօս-
քով հանեց լուր ոգիները , և բոլոր
17 հիւանդները բժշկեց . Որ Եսայի
մարգարէին ձեռքով ըսուած խօսքը
կատարուի . ԻԱնիկայ մեր հիւան-
դութիւնները վերցուց , և մեր ցա-
ւերը կրեց ։
18 Յիսուս իր բոլորտիքը շատ ժո-
ղովուրդ տեսնելով , հրաման ըրաւ
19 որ մէկալ կողմը երթան ։ ԾԵւ
դպիր մը մօտենալով ըսաւ անոր .
Վարդապե՛տ ես քու ետեւէդ պիտի
20 գամ , ո՛ւր որ երթաս ։ Եւ Յի-
սուս ըսաւ անոր . Աղուէսները որ-
ջեր ունին , ու երկնից թռչունները
բոյներ . բայց Որդին մարդոյ տեղ
մը չունի , որ հոն իր գլուխը դնէ ։
21 ԼԵւ մէկ ուրիշը՝ որ անոր աշակերտ-
ներէն էր , ըսաւ անոր . ՀՏէ՛ր՝ ինծի
հրամա՛ն տուր , որ երթամ առաջ
22 իմ հայրս թաղեմ ։ Յիսուս ըսաւ
անոր . Եկո՛ւր իմ ետեւէս , ու
թո՛ղ տուր մեռելներուն որ թաղեն
իրենց մեռելները ։
23 Ու երբոր նաւը մտաւ , իր աշա-
24 կերտները իր ետեւէն գացին . ՃԵւ
ահա՛ մեծ ալէկոծութիւն մը եղաւ
ծովուն մէջ , անանկ որ նաւը ա-
լիքներէն կը ծածկուէր . իսկ ինքը
25 կը քնանար ։ Եւ աշակերտները
մօտ գացին արթընցուցին զանիկայ՝
ու ըսին . Տէ՛ր՝ ազատէ մեզ , ինչու
26 որ ահա կը կորսուինք ։ Եւ ըսաւ
անոնց . Թե՛րահաւատներ՝ ինչո՞ւ
այդպէս վախկոտ էք . ան ատենը
ԺԵլաւ հովերուն ու ծովուն սաստեց ,
27 և մեծ խաղաղութիւն եղաւ ։ Ու
մարդիկը զարմացան՝ և կ'ըսէին .
Ի՞նչպէս մարդ է աս՝ որ հովերը ու
ծովը անոր կը հնազանդին ։
28 ԾՈւ երբոր մէկալ կողմը *Գերգե-
սացւոց երկիրը անցաւ , երկու
դիւահար պատահեցան իրեն՝ գե-
րեզմաններէն ելած՝ սաստիկ կատ-
ղած , անանկ որ ճամբայէն անցնիլ
29 ան ճամբայէն անցնիլ ։ Եւ ահա
աղաղակեցին ու ըսին . Յի՛սուս Որ-
դի Աստուծոյ՝ դուն մեր հետը ի՞նչ
բան ունիս . ատենէն առաջ մեզ
30 տանջելո՞ւ համար հոս եկար ։ Եւ
անոնցմէ հեռու շատ խոզերու երա-
մակ մը կար , որ կ'արածուէին ։
31 Ու դեւերը կ'աղաչէին իրեն՝ ու կ'ը-
սէին . Թէ որ մեզ կը հանես ,
հրամա՛ն տուր մեզի որ երթանք
խոզերուն երամակին մէջը մտնենք ։
32 Եւ ըսաւ անոնց . Գացէ՛ք . ու ա-
նոնք ելան գացին խոզերուն երա-
մակին մէջը մտան . և ահա՛ բոլոր
երամակը գահավէժ տեղէն ծովը
վազեցին , ու ջուրերուն մէջը մե-
33 ռան ։ Խոզարածներն ալ փախան ,
և քաղաքը երթալով բոլորը պատ-
մեցին , ու դիւահարներուն պա-
34 տահած բաները ։ Եւ ահա՛ բոլոր
քաղաքը Յիսուսին դէմը ելաւ . ու
երբոր տեսան զանիկայ , Մաղաչեցին
որ իրենց սահմաններէն երթայ ։

## ԳԼ . Թ

2 Քրիստոս անդամալոյծ մը կը բժշկէ . 9 Մատ-
թէոսը մաքսաւորութիւն ընելէն իրեն կը կան-
չէ . 10 մաքսաւորներու և մեղաւորներու
հետ կ'ուտէ . 14 իր աշակերտներուն ծոմ
չպահելը կ'արդարացընէ . 20 տեռատես կինը
կը բժշկէ . 23 Յայրոսի աղջիկը կը յարուցանէ .
27 երկու կոյրերու աչքերը կը բանայ . 32 համր
դիւահարը կը բժշկէ . 36 և կը խղճայ բազմու-
թեանը վրայ ։

1 Եւ նաւը մտնելով մէկալ կողմը
անցաւ , աու եկաւ իր քաղաքը ։
2 բԵւ ահա՛ բերին իրեն անդամալոյծ
մը , որ մահիճի մէջ պառկած էր .
և գՅիսուս անոնց հաւատքը տեսնե-
լով՝ ըսաւ անդամալոյծին . Քա-
ջալերուէ՛ որդեակ , քու մեղքերդ
3 քեզի ներուած են ։ Եւ ահա՛ դը-
պիրներէն ոմանք իրենց մտքին մէջը
ըսին . Ասիկայ հայհոյութիւն կ'ը-
4 նէ ։ Յիսուս ալ դանոնց խորհուրդ-
ները իմանալով՝ ըսաւ . Ինչո՞ւ
սրտերնուդ մէջ չար բաներ կը խոր-
5 հիք . Քանզի ո՞րը աւելի դիւրին
է . Քու մեղքերդ ներուած են՝ ը-
սե՞լը , թէ Ելի՛ր ու քալէ՛ ըսելը ։
6 Բայց որպէս զի գիտնաք՝ թէ Որդին
մարդոյ իշխանութիւն ունի երկրի
վրայ մեղքերու թողութիւն տա-
լու , (ան ատենը անդամալոյծին
ըսաւ , ) Ելի՛ր՝ մահիճդ ա՛ռ՝ ու
7 տունդ գնա ։ Ու անիկայ ելաւ՝
8 իր տունը գնաց ։ Ժողովուրդները
երբոր տեսան՝ զարմացան , ու փա-
ռաւորեցին զԱստուած , որ մարդոց
անանկ իշխանութիւն տուեր էր ։
9 ԻԵւ Յիսուս անկէ առաջ անցնե-
լով մարդ մը տեսաւ Մատթէոս
անունով , որ մաքս ընդունելու

Յամ Տեառն 31

ՄՏես բ Օր . ե . 25 ։ գ Թագ . ժէ . 18 ։ Ղու . ե . 8 ։ Գոր . ժզ . 39 ։

աԳղ . դ . 13 ։
բՄար . բ . 3 ։ Ղու . ե . 18 ։
գԳղ . ը . 10 ։

դՍաղ . ճլթ . 2 ։ Գղ . ժբ . 25 ։ Մար . ժբ . 15 ։ Ղու . ե . 22 ։ զ . Տ ։ թ . 47 ։ ժա . 17 ։

ԻՄար . բ . 14 ։ Ղու . ե . 27 ։

Յամի Տեառն 31

ե Մար. բ. 15, և. Ղու. ե. 29, և.
զ Գլ. ժա. 19։ Ղու. ե. 30։ ժե. 2։
է Գաղ. բ. 15։
ը Ովս. զ. 6։ Միք. զ. 6, 7, 8։ Գլ. ժբ. 7։
թ Ա Տիմ. ա. 15։
ժ Մար. բ. 18, և. Ղու. ե. 33։ ժը. 12։
ի Յովհ. գ. 29։
լ Գոր. ժգ. 2, 3։ ժդ. 23։ Ակոր. է. 5։
խ Մար. ե. 22, և. Ղու. ը. 41, և։
ծ Մար. ե. 25։ Ղու. ը. 43։
կ Ղու. է. 50։ ը. 48։ ժէ. 19։ ժը. 42։
հ Մար. ե. 38։ Ղու. ը. 51։
ձ Տե՛ս Բ Մն. լե. 25։

տեղը նստեր էր, ու ըսաւ անոր. Ետեւէս եկուր. ան ալ ելաւ անոր
10 ետեւէն գնաց։ Ու եղաւ որ տունը
սեղան նստած ատենը՝ ահա՛ ուրիշ
շատ մաքսաւորներ և մեղաւորներ
եկած՝ ու սեղան նստած էին Յի-
սուսին ու անոր աշակերտներուն
11 հետ։ Ու փարիսեցիները երբոր
տեսան, ըսին անոր աշակերտնե-
րուն. Ինչո՞ւ ձեր վարդապետը
մաքսաւորներուն ու մեղաւորնե-
12 րուն հետ կ'ուտէ։ Բայց Յիսուս
երբոր լսեց, ըսաւ անոնց. Առողջ-
ներուն բժիշկ պէտք չէ, հապա
13 հիւանդներուն։ Գացէք սորվեցէք՝
թէ ինչ է աս խօսքը՝ Ողորմութիւն
կ'ուզեմ, և չէ թէ զոհ. ինչու
որ ես արդարները կանչելու չեկայ,
հապա մեղաւորները։
14 Ան ատենը Յովհաննէսին աշա-
կերտները անոր եկան՝ ու ըսին.
Ինչո՞ւ մենք ու փարիսեցիները շատ
անգամ ծոմ կը պահենք, և քու
15 աշակերտներդ չեն պահեր։ Ու
Յիսուս ըսաւ անոնց. Միթէ կա-
րելի՞ է որ հարսնիքին տղաքը սուգ
պահեն՝ քանի որ փեսան իրենց հետն
է. բայց օրեր պիտի գան՝ որ երբ
փեսան իրենցմէ վերցուի, ան ա-
16 տենը ծոմ պիտի պահեն։ Ու մէկը
չձգեր նոր լաթի կտոր հին հան-
դերձի վրայ. քանզի ան որ անոր
լրութեանը համար դրուած է,
կ'առնէ հանդերձէն, ու պատ-
ռուածքը ալ աւելի գէշ կ'ըլլայ.
17 Ո՛չ ալ նոր գինին հին տիկերու
մէջ կը դնեն. եթէ ոչ՝ տիկերը
կը պատռին՝ ու գինին կը թափի,
և տիկերը կը կորնչին. հապա նոր
գինին նոր տիկերու մէջ կը դնեն,
ու երկուքն ալ կը պահուին։
18 Երբոր անիկայ անոնց հետ աս
բաները կը խօսէր, ահա՛ իշխան մը
եկաւ, երկրպագութիւն կ'ընէր ա-
նոր՝ ու կ'ըսէր. Աղջիկս՝ ալ մինչև
հիմա մեռած է, բայց եկո՛ւր ձեռքդ
անոր վրայ դիր, ու պիտի ապրի։
19 Եւ Յիսուս ելաւ, ու իր աշա-
կերտներուն հետ անոր ետեւէն գը-
նաց։
20 Եւ ահա՛ տասուերկու տարուան
տեռատես կին մը մօտեցաւ ետեւէն՝
անոր հանդերձին քղանցքին դպաւ.
21 Քանզի իր մտքին մէջ կ'ըսէր, թէ
որ միայն անոր հանդերձին դպչիմ,
22 պիտի բժշկուիմ։ Բայց Յիսուս
երբոր ետին դարձաւ՝ ու տեսաւ
զանիկայ, ըսաւ. Քաջալերուէ՛
աղջիկ, քու հաւատքդ քեզ բժըշ-
կեց. և կնիկը նոյն ժամէն բժըշ-
կուեցաւ։
23 Ու երբոր Յիսուս իշխանին տու-
նը եկաւ, ու տեսաւ փողահարները
24 և խռոված բազմութիւնը, ըսաւ
անոնց. Մէկդի գացէք. ինչու
որ աղջիկը մեռած չէ, հապա կը
քնանայ. և ծաղր կ'ընէին անիկայ։
25 Ու երբոր բազմութիւնը դուրս
ելաւ, ինքը ներս մտաւ՝ անոր ձեռ-
քէն բռնեց, ու աղջիկը ոտք ելաւ։
26 Եւ աս լուրը ան բոլոր երկիրը տա-
րածուեցաւ։
27 Ու երբոր Յիսուս անկէ առաջ
անցաւ, երկու կոյր ինկան անոր
ետեւէն. կ'աղաղակէին՝ ու կ'ըսէին.
Ողորմէ՛ մեզի Որդի՛ Դաւթի։
28 Ու երբոր տուն եկաւ, կոյրերը ի-
րեն եկան. և Յիսուս անոնց ը-
սաւ. Կը հաւատա՞ք՝ թէ կրնամ
աս բանը ընել. ըսին անոր.
29 Այո՛ Տէր։ Ան ատենը անոնց աչ-
քերուն դպաւ՝ ու ըսաւ. Ձեր
30 հաւատքին պէս ըլլայ ձեզի։ Ու
անոնց աչքերը բացուեցան. և Յի-
սուս սաստիկ պատուէր տուաւ
անոնց՝ ու ըսաւ. Զգո՛յշ կեցէք,
31 մէկը չիմանայ։ Բայց անոնք ե-
լան ան բոլոր երկրին մէջ անոր
համբաւը տարածեցին։
32 Ու երբոր անոնք դուրս ելան,
ահա՛ մէկ համր դիւահար մարդ մը
33 բերին իրեն։ Ու երբոր դեւը ելաւ,
համրը խօսեցաւ. և ժողովուրդ-
ները զարմացան՝ ու կ'ըսէին թէ
Իսրայէլի մէջ բնաւ ասանկ բան
34 մը տեսնուած չէ։ Բայց փարի-
սեցիները կ'ըսէին թէ Ատիկայ
դեւերուն իշխանովը դեւերը կը հա-
նէ։
35 Եւ Յիսուս կը պտըտէր բոլոր
քաղաքները ու գեղերը, և անոնց
ժողովարաններուն մէջ կը սորվե-
ցընէր, ու կը քարոզէր արքայու-
թեան աւետարանը, և կը բժշկէր
բոլոր ախտերը ու բոլոր հիւան-
դութիւնները ժողովուրդին մէջ։
36 Եւ ժողովուրդները տեսնելով՝
անոնց վրայ խղճաց. ինչու որ
յոգնած ու ցիրուցան եղած էին՝
հովիւ չունեցող ոչխարներու
37 պէս։ Ան ատենը ըսաւ իր աշա-
կերտներուն. Հունձքը շատ է,
38 բայց մշակները քիչ. Ուստի
հունձքին Տէրոջը աղաչեցէ՛ք, որ
մշակներ հանէ իր հունձքին։

## ԳԼ. Ժ

1 Քրիստոս իր տասուերկու առաքեալները կը խրկէ՝ հրաշքներ ընելու իշխանութիւն տալով անոնց. 5 պատուէրներ կու տայ անոնց և կը սորվեցընէ թէ ինչ պարտին ընել. 16 կը միխիթարէ զանոնք հալածմունքներու վրայով. 40 և օրհնութիւն կը խոստանայ զանոնք ընդունողներուն։

1 Եւ իր քովը կանչելով իր տաս-
ուերկու աշակերտները, անոնց

Յամի Տեառն 31

ձ Գոր. ի. 10։
ղ Գլ. ժե. 22։ ի. 30, 31։ Մար. ժ. 47, 48։ Ղու. ժը. 38, 39։
ճ Գլ. ը. 4։ ժբ. 16։ ժէ. 9։ Ղու. ե. 14։
մ Մար. է. 36։
յ Տե՛ս Գլ. ժբ. 22։ Ղու. ժա. 14։
ն Գլ. ժբ. 24։ Մար. գ. 22։ Ղու. ժա. 15։
շ Մար. զ. 6։ Ղու. ժգ. 22։
ո Գլ. դ. 23։
չ Մար. զ. 34։
պ Թու. իէ. 17։ Գ Թագ. իբ. 17։ Եզեկ. լդ. 5։ Զաք. ժ. 2։
ջ Ղու. ժ. 2։ Յովհ. դ. 35։
ռ Բ Թես. գ. 1։
ս Մար. գ. 13, 14։ զ. 7։ Ղու. զ. 13։ թ. 1։

Ցամի Տեսութ

31

իշխանութիւն տուաւ պիղծ ոգի-
ներուն վրայ որ վանոնք հանեն, և
ամէն ցաւերը ու ամէն հիւանդու-
թիւնները բժշկեն ։
2 Ու տասներկու առաքելոց ա-
նունները ասոնք են . առաջինը
Սիմոն Պետրոս ըսուածը, և անոր
3 եղբայրը Անդրէաս . Յակոբոս Զե-
բեդեան, և անոր եղբայրը Յով-
հաննէս . Փիլիպպոս և Բարթու-
ղիմէոս . Թովմաս և Մատթէոս
մաքսաւոր . Յակոբոս Ալփեան, և
Ղեբէոս որ Թադէոս մականուա-
4 նեցաւ . Սիմոն Կանանացի և
Յուդա Իսկարիովտացի, որ նաև
մատնեց զանիկայ ։
5 Աս տասներկուքը Յիսուս խրր-
կեց, և անոնց պատուիրեց ըսե-
լով . Հեթանոսներու ճամբայ մի
երթաք, ու Սամարացիներու քա-
6 ղաք մի մտնէք . Հապա աւելի
Իսրայէլի տանը կորսուած ոչխար-
7 ներուն գացէք ։ Ու երբոր կ'եր-
թաք, քարոզեցէք ու ըսէք թէ
Երկնից թագաւորութիւնը մօտե-
8 ցած է ։ Հիւանդները բժշկեցէք,
բորոտները *մաքրեցէք, դևերը
հանեցէք . ձրի առեր էք, ձրի
9 տուէք ։ Մի ստանաք ոսկի և
ոչ արծաթ և ոչ պղինձ ձեր գօ-
10 տիներուն մէջը, Ոչ ճամբու հա-
մար տոպրակ, և ոչ կրկին հան-
դերձ, ոչ կօշիկ, ոչ գաւազան .
ինչու որ մշակը իր կերակուրին
11 արժանի է ։ Եւ նոր քաղաք կամ
գեղ մտնէք, հարցուցէք թէ ով
է անոր մէջը արժանաւոր . ու հոն
12 կեցէք մինչև որ անկէ ելլէք ։ Ու
երբոր տունը կը մտնէք, բարև
13 տուէք †անոր ։ Եւ թէ որ ան
տունը արժանաւոր է, ձեր բարևը
անոր վրայ գայ . հապա թէ որ
արժանաւոր չէ, ձեր բարևը ձեզի
14 դառնայ ։ Եւ ով որ ձեզ չըն-
դունի ու ձեր խօսքերը մտիկ չընէ,
երբոր ան տունէն կամ քաղաքէն
կ'ելլէք, ձեր ոտքերուն փոշին
15 թօթվեցէք ։ Ճշմարիտ կ'ըսեմ
ձեզի . Սոդոմացւոց ու Գոմորա-
ցւոց երկրին աւելի դիւրին պիտի
ըլլայ դատաստանին օրը քան թէ
ան քաղաքին ։
16 Ահա ես ձեզ կը խրկեմ իբրև
ոչխարներ գայլերու մէջ . ուստի
օձերու պէս խորագէտ եղէք, և ա-
17 ղաւնիներու պէս միամիտ ։ Իսկ
մարդոցմէ զգուշացէք . ինչու որ
ձեզ ատեաններու պիտի մատնեն,
ու իրենց ժողովարաններուն մէջը
18 ձեզ պիտի ծեծեն . Եւ իմ անուա-
նըս համար կուսակալներու ու թա-
գաւորներու առջև պիտի տարուիք,
անոնց և հեթանոսներուն վկայու-
19 թիւն ըլլալու համար ։ Բայց երբ-
որ ձեզ մատնեն, հոգ մի ընէք թէ
ինտոր կամ ինչ պիտի խօսիք .
ինչու որ ձեզի պիտի տրուի ան ժա-
20 մուն ինչ որ պիտի խօսիք ։ Վասն
զի չէ թէ դուք էք որ կը խօսիք,
հապա ձեր Հօրը Հոգին որ ձեր
21 ներսի դին կը խօսի ։ Ու եղբայր
եղբայրը մահուան պիտի մատնէ,
և հայրը՝ որդին . և որդիք իրենց
ծնողացը վրայ պիտի ելլեն ու մեռ-
22 ցընեն զանոնք ։ Եւ իմ անուանս
համար ամենուն ատելի պիտի ըլ-
լաք . բայց ով որ մինչև վերջը
համբերէ, անիկայ պիտի ապրի ։
23 Ու երբոր աս քաղաքին մէջ ձեզ
կը հալածեն, ուրիշ քաղաք փա-
խէք . ճշմարիտ կ'ըսեմ ձեզի . Իս-
րայէլի քաղաքները պիտի չհատըն-
նէք, մինչև որ Որդին մարդոյ գայ ։
24 Աշակերտը իր վարդապետէն աւելի
չէ, և ոչ ծառան իր տիրոջմէն ։
25 Հերիք է աշակերտին որ իր վար-
դապետին պէս ըլլայ, ու ծառային
իր տիրոջը պէս . թէ որ տանուտէ-
րը Բեէլզեբուղ կոչեցին, որչափ
26 աւելի անոր ընտանիքը ։ Ուստի
մի վախնաք անոնցմէ . ինչու որ
բան մը չկայ ծածուկ որ պիտի չը-
յայտնուի, և գաղտուկ որ պիտի
27 չգիտցուի ։ Ինչ որ ձեզի մութի
մէջ կ'ըսեմ, անիկայ լոյսի մէջ
խօսեցէք, և ինչ որ ականջէն 'ի
վար կը լսէք, տանիքներուն վրայ
28 քարոզեցէք ։ Եւ մի վախնաք ա-
նոնցմէ որ մարմինը կը սպաննեն,
ու չեն կրնար հոգին սպաննել .
հապա աւելի անկէ վախցէք դուք,
որ կրնայ հոգին ու մարմինը գեհենին
29 մէջ կորսնցընել ։ Չէ՞ որ երկու
ճնճղուկ մէկ դանկի կը ծախուին,
և անոնցմէ մէկը գետինը չիյնար
30 առանց ձեր Հօրը ։ Բայց ձեր
գլխուն բոլոր մազերն ալ համրուած
31 են ։ Ուրեմն մի վախնաք . ինչու
որ շատ ճնճղուկներէն լաւ էք դուք ։
32 Արդ՝ ով որ մարդոց առջև զիս կը
դաւանի, ես ալ անիկայ պիտի
դաւանիմ իմ Հօրս առջևը՝ որ եր-
33 կինքն է . Եւ ով որ մարդոց առջև
զիս կ'ուրանայ, ես ալ անիկայ պի-
տի ուրանամ իմ Հօրս առջևը՝ որ
34 երկինքն է ։ Մի կարծէք թէ ես
երկրի վրայ խաղաղութիւն ձգելու
եկայ . խաղաղութիւն ձգելու չե-
35 կայ, հապա սուր . Ինչու որ եկայ
մարդը իր հօրմէն զատելու, ու աղ-
ջիկը՝ իր մօրմէն, ու հարսը՝ իր կե-
36 սուրէն . Եւ մարդուն թշնամիները
37 իր ընտանիքը պիտի ըլլան ։ Ան որ
հայրը կամ մայրը ինծմէ աւելի կը
սիրէ, ինծի արժանի չէ . և ան որ
տղան կամ աղջիկը ինծմէ աւելի կը

Ցամի Տեսութ

31

Ցամի Տեառն
31

ծԳլ. Ժզ. 24 ։ Մար. ը. 34 ։ Ղու. թ. 23 ։ Ժդ. 27 ։
էԳլ. Ժզ. 25 ։ Ղու. Ժէ. 33 ։ Յով. Ժբ. 25 ։
ըԳլ. Ժը. 5 ։ Ղու. թ. 48 ։ Ժ. 16 ։ Յով. Ժբ. 44 ։ Ժգ. 20 ։ Գաղ. դ. 14 ։
թԳ Թագ. Ժէ. 10 ։ Ժը. 4 ։ Դ Թագ. դ. 8 ։
ժԳլ. ը. 5. 6 ։ Իե. 40 ։ Մար. թ. 40 ։ Եբր. զ. 10 ։

38 սիրէ , ինծի արժանի չէ . ծԵւ ան
որ իր խաչը չառներ ու իմ ետեւէս
39 գար , ինծի արժանի չէ ։ էԱն որ
իր անձը կը գտնէ , պիտի կորսըն-
ցընէ զանիկայ . և ան որ իր անձը
ինծի համար կը կորսընցընէ , պիտի
40 գտնէ զանիկայ ։ ըԱն որ ձեզ կ'ըն-
դունի , զիս կ'ընդունի . և ան որ
զիս կ'ընդունի , զիս խրկողը կ'ըն-
41 դունի ։ թԱն որ մարգարէ մը կ'ըն-
դունի մարգարէի անունով , մար-
գարէի վարձք կ'առնէ . և ան որ
արդար մը կ'ընդունի արդարի ա-
նունով , արդարի վարձք կ'առնէ ։
42 ժՈւ ան որ աս պզտիկներէն մէկուն
միայն գաւաթ մը պաղ ջուր կը
խմցընէ աշակերտի անունով , ճըշ-
մարիտ կ'ըսեմ ձեզի , բնաւ իր
վարձքը պիտի չկորսընցընէ ։

## ԳԼ. ԺԱ

2 Յովհաննէս իր աշակերտները Քրիստոսին կը խրկէ ։ 7 Քրիստոսի վկայութիւնը Յովհաննէսին համար ։ 18 Ժողովրդոց կարծիքը Յովհաննէսին ու Քրիստոսի վրայով ։ 20 Քրիստոս կը նախատէ Քորազինը , Բեթսայիդան և Կափառնայումը՝ իրենց ապերախտութեանը և անզեղջ մնալուն համար . 25 և կը փառաւորէ իր Հօրը իմաստութիւնը՝ Աւետարանը պարզամիտներուն յայտնելուն համար . 28 իրեն կը կանչէ ամէն անոնք՝ որ իրենց մեղքին ծանրութիւնը կը զգան ։

աԳլ. Ժդ. 3 ։
բՂու. է. 18. 19 ։ ևն ։
գԾն. Խթ. 10 ։ Թու. Իդ. 17 ։ Դան. թ. 24 ։ Յով. զ. 14 ։
դԵս. Իթ. 18 ։ Լե. 4. 5. 6 ։ Խբ. 7 ։ Յով. բ. 23 ։ զ. 2 ։ ե. 36 ։ Ժ. 25. 38 ։ Ժդ. 11 ։
եՍաղ. Իբ. 26 ։ Ես. Կա. 1 ։ Ղու. դ. 18 ։ Յակ. բ. 5 ։
զԵս. ը. 14. 15 ։ Գլ. Ժգ. 57 ։ Իդ. 10 ։ Իզ. 31 ։ Հռով. թ. 32. 33 ։ ա Կոր. ա. 23 ։ բ. 14 ։ Գաղ. ե. 11 ։ ա Պետ. բ. 8 ։
էՂու. է. 24 ։
ըԵփե. դ. 14 ։
թԳլ. Ժդ. 5 ։ Իա. 26 ։ Ղու. ա. 76 ։ է. 26 ։

1 Ու եղաւ որ երբ Յիսուս լմնցուց
իր տասներկու աշակերտներուն
պատուէր տալը , գնաց անկէ ա-
նոնց քաղաքներուն մէջ քարոզելու
և սորվեցընելու ։
2 Իսկ Յովհաննէս աբանտին մէջը
բերբոր լսեց Քրիստոսի գործքերը ,
իր աշակերտներէն երկուքը խրկե-
3 լով ըսաւ անոր . գԴուն ա՞ն ես՝ որ
գալու էիր , թէ ուրիշի մը սպա-
4 սենք ։ Եւ Յիսուս պատասխան
տալով անոնց ըսաւ . Գացէք
պատմեցէք Յովհաննէսին՝ ինչ որ
5 կը լսէք ու կը տեսնէք . դԿոյրերը
կը տեսնեն , կաղերը կը քալեն ,
բորոտները կը մաքրուին , խուլերը
կը լսեն , մեռելները յարութիւն
կ'առնեն , եու աղքատներուն աւե-
6 տարան կը քարոզուի ։ Եւ երանի
անոր , զոր իմ վրայովս չգայթակ-
ղիր ։
7 զՈւ երբոր անոնք գացին , Յիսուս
սկսաւ ժողովուրդներուն ըսել Յով-
հաննէսին համար . Ի՞նչ տեսնե-
լու ելաք անապատին մէջ . եղէ՞գ
8 մը հովէն շարժուած ։ Հապա ի՞նչ
տեսնելու ելաք . փափուկ հանդերձ-
ներ հագած մա՞րդ մը . ահա փա-
փուկ հանդերձներ հագնողները թա-
9 գաւորաց տուներն են ։ Հապա
ի՞նչ տեսնելու ելաք . մարգարէ՞ .
այո՛ կ'ըսեմ ձեզի , ըՄարգարէէ մըն
10 ալ աւելի ։ Ինչու որ ասիկայ է՝
որուն համար գրուած է . ծԱհա ես
իմ դեսպանս կը խրկեմ քու երե-
սիդ առջեւէն , որ քու ճամբադ պի-
տի պատրաստէ քու առջեւդ ։
11 Ճշմարիտ կ'ըսեմ ձեզի , կնիկնե-
րէն ծնածներուն մէջը Յովհաննէս
մկրտիչէն մեծը ելած չէ . սակայն
երկնից թագաւորութեանը մէջ
12 պինտ պզտիկը՝ անկէ մեծ է ։ ժՈւ
Յովհաննէս մկրտիչին օրերէն մինչև
հիմա երկնից թագաւորութիւնը
ուժով կ'առնուի , և ուժեղները
13 կը յափշտակեն անիկայ ։ ըԻնչու որ
բոլոր մարգարէները ու օրէնքը մին-
չև Յովհաննէս մարգարէութիւն ը-
14 րին . Եւ եթէ կ'ուզէք ընդունիլ ,
անիկայ է խԵղիան՝ որ պիտի գար ։
15 ծԱն որ լսելու ականջ ունի , թող
16 լսէ ։ Բայց կորո՞ւ նմանցընեմ աս
ազգը . կը նմանի տղոց , որ շու-
կաները նստելով՝ իրենց ընկերնե-
17 րուն կը կանչեն , Ու կ'ըսեն . Փող
հնչեցուցինք ձեզի ու չխաղացիք ,
ողբ կարդացինք ձեզի ու չլացիք ։
18 Վասն զի Յովհաննէսը եկաւ , ո՛չ
կ'ուտէր և ո՛չ կը խմէր , ու կ'ը-
սեն . Դև կայ անոր ներսի դին ։
19 Որդին մարդոյ եկաւ՝ կ'ուտէ ու կը
խմէ , և կ'ըսեն . Ահա՛ ուտող և
արբեցող մարդ մը՝ հմաքսաւորնե-
րու ու մեղաւորներու բարեկամ .
ձև իմաստութիւնը արդարացաւ իր
տղոցմէն ։
20 ղԱն ատենը սկսաւ նախատել ան
քաղաքները , որոնց մէջ գործուեր
էին իր հրաշքներուն շատերը .
21 քանզի չապաշխարեցին . Վայ քեզ
Քորազին , վա՜յ քեզ Բեթսայիդա .
ինչու որ եթէ Տիւրոսի ու Սիդոնի
մէջ եղած ըլլային ան հրաշքները՝
որ ձեր մէջը եղան , շատոնցմէ
ճքուրձով ու մոխիրով ապաշխա-
22 րած պիտի ըլլային ։ Բայց ձեզի
կ'ըսեմ . մՏիւրոսին և Սիդոնին
աւելի դիւրին պիտի ըլլայ դատաս-
23 տանին օրը՝ քան թէ ձեզի ։ Եւ
դուն Կափառնայում՝ յոր մինչև
երկինքը բարձրացած ես , մինչև
դժոխքը պիտի իջնես , ինչու որ
եթէ Սոդոմի մէջ եղած ըլլային ան
հրաշքները՝ որ քու մէջդ եղան .
իրաւ որ մինչև աս օրս դեռ պիտի
24 մնար ։ Բայց ձեզի կ'ըսեմ՝ որ նՍո-
դոմացւոց երկրին աւելի դիւրին
պիտի ըլլայ դատաստանին օրը ,
քան թէ քեզի ։
25 շՆոյն ժամանակին պատասխան
տուաւ Յիսուս ու ըսաւ . Շնոր-
հակալ եմ քեզմէ ո՛վ Հայր՝ Տէր
երկնի և երկրի , ոոր աս բաները
ծածուկ պահեցիր իմաստուններէն
և գիտուններէն , ու չտղոց յայտ-
26 նեցիր ։ Այո՛ ո՛վ Հայր , ինչու որ

Ցամի Տեառն
31

ժՄաղ. գ. 1 ։ Մար. ա. 2 ։ Ղու. ա. 76 ։ է. 27 ։
իՂու. Ժզ. 16 ։
լՄաղ. դ. 5 ։
խՄաղ. դ. 5 ։ Գլ. Ժէ. 12 ։ Ղու. ա. 17 ։
ծԳլ. Ժգ. 9 ։ Ղու. ը. 8 ։ Յայտ. բ. 7. 11. 17. 29 ։ գ. 6. 13. 22 ։
կՂու. է. 31 ։
հԳլ. թ. 10 ։
ձՂու. է. 35 ։
ղՂու. Ժ. 13 ։ ևն ։
ճՅովն. գ. 7. 8 ։
մԳլ. Ժ. 15 ։ Վեր 24 ։
յՏե՛ս Ես. Ժդ. 13 ։ Ողբ. բ. 1 ։
նԳլ. Ժ. 15 ։
շՂու. Ժ. 21 ։
ոՏե՛ս Սաղ. ը. 2 ։ ա Կոր. ա. 19. 27 ։ բ. 8 ։ բ Կոր. գ. 14 ։
չԳլ. Ժզ. 17 ։

Յամ Տեառն 31

քու առջիդ ասանկ հաճելի եղաւ ։
27 ղԱմէն բան ինծի տրուեցաւ իմ
Հօրմէս ու մէկը չճանչնար Որդին՝
բայց Հայրը ։ ճև մէկը չճանչնար
Հայրը՝ բայց Որդին և ան՝ որուն
28 որ Որդին կ՚ուզէ յայտնել ։ Եկէք
ինծի բոլոր յոգնած ու բեռնաւո-
րածներ և ես ձեզ պիտի հանգ-
29 չեցընեմ ։ Իմ լուծս ձեր վրայ ա-
ռէք, մև ինծմէ սորվեցէք՝ որ հեզ
եմ ու սրտով խոնարհ, և յձեր
անձերուն հանգստութիւն պիտի
30 գտնէք ։ նԻնչու որ իմ լուծս
քաղցր է և իմ բեռս թեթև ։

## ԳԼ. ԺԲ

1 Քրիստոս կը յանդիմանէ փարիսեցւոց կուրութիւնը շաբաթ օրուան վրայով 3 Սուրբ Գիրքերով, 9 փաստով, 13 և հրաշքով մը. 22 Կոյր ու համր դիւահար մը կը բժշկէ. 31 Կ՚իմացընէ թէ Սուրբ Հոգիին դէմ եղած հայհոյութիւնը պիտի չներուի. 36 և թէ դատարկ խօսքերու համար հաշիւ պիտի տրուի. 38 Կը յանդիմանէ անհաւատները որ նշան կը խնդրեն. 49 և կը ցուցընէ թէ ով է իր եղբայրը՝ իր քոյրը և իր մայրը.

1 Ն ատենը ոՅիսուս շաբաթ օրը
գնաց արտերուն մէջէն և իր
աշակերտները անօթեցան, ու սկը-
սան ցորենի հասկեր փրցընել և ու-
2 տել ։ Փարիսեցիները երբոր տե-
սան, ըսին անոր ։ Ահա քու աշա-
կերտներդ կը գործեն ինչ որ ար-
3 ժան չէ շաբաթ օրը գործել ։ Ան
ալ անոնց ըսաւ ։ Չէ՞ք կարդացեր
դուք չԴաւիթին ըրածը երբոր
անօթեցաւ ինքը ու անոնք որ իր
4 հետն էին ։ Ինչպէս մտաւ Ա-
տուծոյ տունը, և պառաջաւորու-
թեան հացերը կերաւ, որ ոչ իրեն
օրինաւոր էր ուտել, և ոչ անոնց
որ իր հետն էին, ջբայց միայն քա-
5 հանաներուն ։ Կամ թէ ռօրէնքին
մէջը չէ՞ք կարդացեր, որ քահա-
նաները շաբաթ օրերը տաճարին
մէջ շաբաթը կը պղծեն ու անմեղ
6 են ։ Բայց ձեզի կ՚ըսեմ որ աս
տեղը ստաճարէն մեծ մէկը կայ
7 Եւ թէ որ գիտնայիք թէ ինչ
ըսել է, ւՈղորմութիւն կ՚ուզեմ
ու չէ թէ զոհ, ան ատենը ան-
պարտները չէիք դատապարտեր
8 Քանզի Որդին մարդոյ շաբաթին
տէրն է ։
9 բԵւ անկէ երթալով՝ եկաւ ա-
10 նոնց ժողովարանը ։ Եւ հօն մէկ
մարդ մը կար՝ որուն ձեռքը չորցած
էր, և հարցուցին անոր՝ ու ըսին
թէ փՇաբաթ օրը բժշկել արժա՞ն
է, որ անոր վրայով ամբաստանու-
11 թիւն ընեն ։ Ան ալ ըսաւ անոնց ։
Ձեզմէ ո՞ր մարդը կայ՝ որ մէկ ոչ-
խար մը ունենայ, և անիկա՞ շա-
բաթ օրը քփոսի մէջ իյնայ պիտի
չբռնէ՞ ու վեր հանէ զանիկայ ։

ղ Գլ. ԻԲ. 18. Ղու. Ժ. 22. Յով. Գ. 35. ԺԳ. 3. ԺԷ. 2. ա Կոր. ԺԲ. 27.
ճ Յով. Ա. 18. Զ. 46. Ժ. 15.
մ Յով. ԺԳ. 15. Փիլ. Բ. 5. ա Պետ. Բ. 21. ա Յով. Բ. 6.
յ Զաք. Թ. 9. Փիլ. Բ. 7. 8.
ն Երեմ. Զ. 16.
շ ա Յով. Ե. 3.
ո Բ Օր. ԻԳ. 25. Մար. Բ. 23. Ղու. Զ. 1.
չ ա Թագ. ԻԱ. 6.
պ Ել. ԻԹ. 30. Ղև. ԻԴ. 5.
ջ Ել. ԻԹ. 32. 33. Ղև. Ը. 31. ԻԴ. 9.
ռ Թուոց ԻԸ. 9. Յով. Է. 22.
ս Բ Մն. Զ. 18. Մաղ. Գ. 1.
ւ Ովս. Զ. 6. Միք. Զ. 6. 7. 8. Գլ. Թ. 13.
բ Մար. Գ. 1. Ղու. Զ. 6.
փ Ղու. ԺԳ. 14. ԺԴ. 3. Յով. Թ. 16.
ք Տես Ել. ԻԳ. 4. 5. Բ Օր. ԻԲ. 4.

12 Արդ որչափ աւելի է մարդը ոչ-
խարէն ։ ուրեմն շաբաթ օրը բարի
13 գործել արժան է ։ Ան ատենը
ըսաւ ան մարդուն ։ Երկընցո՛ւր
ձեռքդ ։ ան ալ երկընցուց, ու ող-
14 ջացաւ մէկալին պէս ։ Իսկ ւփա-
րիսեցիները դուրս ելլելով՝ անոր
վրայ խորհուրդ կ՚ընէին թէ ին-
տո՞ր անիկայ կորսընցընեն ։
15 Եւ Յիսուս երբոր գիտցաւ,
ևզգուշացաւ անկէ ։ Եւ շատ ժո-
ղովուրդներ անոր ետևէն գացին,
16 ու ամէնը բժշկեց ։ Եւ ծսաստիկ
պատուիրեց անոնց, որ զինքը մէ-
17 կու մը չյայտնեն ։ Որ կատարուի
Եսայի մարգարէին ձեռքով ը-
18 սուած խօսքը ։ գԱհա իմ ծառաս՝
որ ընտրեցի, և իմ սիրելիս՝ հորուն
հաւնեցաւ իմ անձս ։ Իմ Հոգիս
անոր վրայ պիտի դնեմ, ու հե-
թանոսներուն իրաւունք պիտի
19 պատմէ ։ Ոչ պիտի վիճի, և ոչ
պիտի աղաղակէ և ոչ մէկը պի-
տի լսէ անոր ձայնը հրապարակնե-
20 րուն մէջ ։ Ջախջախած եղէգը
պիտի չփշրէ, ու պլպլած պատ-
րոյգը պիտի չմարէ, մինչև որ դա-
տաստանը յաղթութեան հանէ ։
21 Եւ հեթանոսները անոր անուանը
պիտի յուսան ։
22 յԱն ատենը կոյր ու համր դիւա-
հար մը բերին իրեն, և զանիկայ
բժշկեց, անանկ որ համրը ու կոյրը
23 խօսեցաւ ու տեսաւ ։ Եւ բոլոր
ժողովուրդները զարմացան՝ ու կ՚ը-
սէին ։ Արդեօք ասիկա՞յ է Դաւիթի
24 որդին ։ ղԲայց փարիսեցիները
երբոր լսեցին, ըսին ։ Ասիկայ
ուրիշ բանով չհաներ դևերը՝ բայց
դևերուն Բէեղզեբուղ իշխանովը ։
25 Եւ ճՅիսուս անոնց խորհուրդները
իմանալով՝ ըսաւ անոնց ։ Ամէն
թագաւորութիւն իրեն դէմ բաժ-
նուած՝ կ՚աւերի և ամէն քաղաք
կամ տուն իրեն դէմ բաժնուած՝
26 չկրնար կենալ ։ Եւ թէ որ Սա-
տանան՝ Սատանայ կը հանէ, իրեն
դէմ բաժնուեցաւ, ուստի ինտո՞ր
պիտի կենայ անոր թագաւորու-
27 թիւնը ։ Ու թէ որ ես Բէեղզեբու-
ղով դևերը կը հանեմ, ձեր որ-
դիները ինչո՞վ կը հանեն ։ ուրեմն
անոնք պիտի ըլլան ձեր դատաւոր-
28 ները ։ Բայց թէ որ ես Աստուծոյ
Հոգիովը կը հանեմ դևերը ուրեմն
մԱստուծոյ թագաւորութիւնը
29 ձեր վրայ հասած է ։ յԿամ ին-
տո՞ր կրնայ մէկը զօրաւոր մարդու
մը տունը մտնել և անոր կարասի-
ները յափշտակել թէ որ առաջ
ան զօրաւոր մարդը չկապէ, ու
30 ետքը անոր տունը կողոպտէ ։ Ան
որ իմ հետս չէ ինծի հակառակ

Յամ Տեառն 31

ւ Գլ. ԻԶ. 4. Մար. Գ. 6. Ղու. Զ. 11. Յով. Ե. 18. Ժ. 39. ԺԱ. 53.
և Տես Գլ. Դ. 23. Մար. Գ. 7.
ի Գլ. ԺԹ. 2.
ծ Գլ. Թ. 30.
գ Ես. ԽԲ. 1.
հ Գլ. Գ. 17. ԺԷ. 5.
յ Տես Գլ. Թ. 32. Մար. Գ. 11. Ղու. ԺԱ. 14.
ղ Գլ. Թ. 34. Մար. Գ. 22. Ղու. ԺԱ. 15.
ճ Գլ. Թ. 4. Յով. Բ. 25. Յայտ. Բ. 23.
մ Դան. Բ. 44. Է. 14. Ղու. Ա. 33. ԺԱ. 20. ԺԷ. 20. 21.
յ Ես. ԽԹ. 24. Ղու. ԺԱ. 21. 22. 23.

Յամի Տեառն 31

է, և ան որ ինծի հետ չժողվեր,
31 ցիրուցան կ'ընէ ։ Անոր համար
ձեզի կ'ըսեմ . Ամէն մեղք ու հայ-
հոյութիւն պիտի ներուի մարդոց .
բայց Սուրբ Հոգիին դէմ եղած
հայհոյութիւնը պիտի չներուի
32 մարդոց . Եւ ո՛վ որ Որդւոյ մար-
դոյ դէմ բան կ'ըսէ, պիտի ներուի
անոր . բայց ո՛վ որ Հոգւոյն Սրբոյ
դէմ կ'ըսէ, պիտի չներուի անոր,
ո՛չ աս աշխարհիս մէջ՝ և ո՛չ գա-
33 լու աշխարհին մէջ ։ Կամ ծառը
բարի ըրէք, ու անոր պտուղը
բարի . կամ ծառը չար ըրէք, ու
անոր պտուղը չար . ինչու որ ծա-
34 ռը պտուղէն կը ճանչցուի ։ Իժե-
րու ծնունդներ՝ ի՞նչպէս կրնաք
բարի խօսիլ, որ չար էք . ինչու
որ սրտին աւելցուքէն բերանը
35 կը խօսի ։ Բարի մարդը՝ իր սրտին
բարի գանձէն բարի բաներ կը հա-
նէ . և չար մարդը՝ իր սրտին չար
գանձէն չար բաներ կը հանէ ։
36 բայց ձեզի կ'ըսեմ, թէ Ամէն պա-
տարկ խօսքերու համար՝ որ մար-
դիկ կը խօսին, դատաստանին օրը
37 հաշիւ պիտի տան ։ Ինչու որ քու
խօսքերէդ պիտի արդարանաս, և
քու խօսքերէդ պիտի դատապար-
տուիս ։
38 Ան ատենը դպիրներէն ու փա-
րիսեցիներէն ոմանք պատասխան
տուին իրեն՝ ու ըսին . Վա՛րդա-
պետ՝ կ'ուզենք քեզմէ նշան մը
39 տեսնել ։ Անիկայ պատասխան
տուաւ ու անոնց ըսաւ . Չար և
շնացող ազգը նշան կ'ուզէ, և
ուրիշ նշան պիտի չտրուի անոր,
բաց միայն Յովնան մարգարէին
40 նշանը ։ Քանզի ինչպէս որ Յով-
նան իրեք օր ու իրեք գիշեր կէտ
ձուկին փորին մէջն էր, անանկ ալ
Որդին մարդոյ պիտի ըլլայ երկրիս
սրտին մէջը իրեք օր ու իրեք գի-
41 շեր ։ Նինուէի մարդիկը դա-
տաստանին օրը աս ազգին հետ պի-
տի ելլեն, ու պիտի դատապար-
տեն զանիկայ . ինչու որ Յովնանին
քարոզութեամբը զղջի եկան .
և ահա՛ Յովնանէն մեծ մէկը կայ
42 հոս ։ Հարաւի թագուհին դա-
տաստանին օրը աս ազգին հետ պի-
տի ելլէ, ու պիտի դատապարտէ
զանիկայ . ինչու որ ինքը երկրի
ծայրերէն եկաւ Սողոմոնին իմաս-
տութիւնը լսելու . և ահա՛ Սողո-
մոնէն մեծ մէկը կայ հոս ։
43 Ու երբոր պիղծ ոգին մարդէ մը
կ'ելլէ, անջուր տեղուանք կը պը-
տըտի, հանգստութիւն կը փնտռէ՝
44 ու չգտներ . Ան ատենը կ'ըսէ .
դառնամ նորէն իմ տունս՝ ուսկից
որ ելայ . և կու գայ զանիկայ կը

Մար. գ. 28 ։ Ղու. ժբ. 10 ։ Եբր. զ. 4 ։ ժ. 26, 29 ։ Յով. ե. 16 ։ Գոր. է. 51 ։ Գլ. ժա. 19 ։ ժգ. 55 ։ Յով. է. 12, 52 ։ Տիմ. ա. 13 ։ Գլ. է. 17 ։ Ղու. զ. 43, 44 ։ Գլ. գ. 7 ։ իգ. 33 ։ Ղու. զ. 45 ։ Գլ. ժզ. 1 ։ Մար. ը. 11 ։ Ղու. ժա. 16, 29 ։ Յով. բ. 18 ։ Կոր. ա. 22 ։ Եսա. ծէ. 3 ։ Գլ. ժզ. 4 ։ Մար. ը. 38 ։ Յով. դ. 48 ։ Յով. ա. 17 ։ Ղու. ժա. 32 ։ Տես Երեմ. գ. 11 ։ Եզեկ. ժզ. 51, 52 ։ Հռով. բ. 27 ։ Յով. գ. 5 ։ Թագ. ժ. 1 ։ Մն. թ. 1 ։ Ղու. ժա. 31 ։ Ղու. ժա. 24 ։ Յոբ. ա. 7 ։ Պետ. ե. 8 ։

գտնէ պարապ՝ մաքրուած ու
45 պատրաստուած ։ Ան ատենը կ'եր-
թայ՝ և իր հետը կ'առնէ եօթը
ուրիշ ոգիներ իրմէ աւելի չար, ու
մտնելով՝ հոն կը բնակին . և ան
մարդուն վերջը՝ առջինէն գէշ
կ'ըլլայ . ասանկ պիտի ըլլայ աս
չար ազգին ալ ։
46 Ու քանի որ ինքը ժողովուրդին
կը խօսէր, ահա՛ իր մայրը ու
եղբայրները դուրսը կայներ էին,
47 և կ'ուզէին իր հետը խօսիլ ։ Ու
մէկը իրեն ըսաւ . Ահա՛ քու մայրդ
ու եղբայրներդ դուրսը կայներ են,
48 և կ'ուզեն հետդ խօսիլ ։ Ան ալ
իրեն ըսողին պատասխան տուաւ՝
ու ըսաւ . Ո՞վ է իմ մայրս, և ո՞վ
49 են իմ եղբայրներս ։ Եւ իր ձեռքը
դէպ 'ի իր աշակերտներուն երկըն-
ցընելով՝ ըսաւ . Ահա՛ իմ մայրս՝ և
50 իմ եղբայրներս . Վասն զի ո՛վ
որ իմ երկնաւոր Հօրս կամքը կա-
տարէ, անիկայ է իմ եղբայրս և
քոյրս ու մայրս ։

## ԳԼ. ԺԳ

3 Սերմանացանին առակը . 16 անոր մեկնութիւնը ։ 24 Որոմին, 31 մանանեխին, 33 խմորին, 44 ծածկուած գանձին, 45 մարգարիտին 47 ու ծովը ձգուած ուռկանին առակները ։ 53 Քրիստոս կ'անարգուի իր հայրենակիցներէն ։

1 Ան օրը Յիսուս տունէն ելլելով՝
2 ծովուն եզերքը նստաւ ։ Եւ
շատ ժողովուրդներ քովը ժող-
վուեցան, անանկ որ ինքը նաւը
մտաւ՝ ու նստաւ . և բոլոր ժողո-
վուրդը ծովեզերքը կայներ էր ։
3 Ու շատ բաներ խօսեցաւ անոնց
առակներով՝ և ըսաւ .
4 Ահա սերմ ցանողը ելաւ՝ որ
սերմ ցանէ . ու երբոր կը ցանէր՝
մէկ քանիները ճամբուն քովը ին-
կան, և թռչունները եկան՝ ու կե-
5 րան զանոնք ։ Եւ ուրիշները ապա-
ռաժուտ տեղերու վրայ ինկան՝ ուր
որ շատ հող չկար . և շուտ մը բու-
սան, հողը խորունկութիւն չունե-
6 նալուն համար . Սակայն արևուն
ծագած ատենը այրեցան, ու ար-
մատ չունենալնուն համար չորցան ։
7 Եւ ուրիշները ինկան փուշերու
մէջ, և փուշերը ելան՝ ու խեղդեցին
8 զանոնք ։ Եւ ուրիշները ինկան ա-
ղէկ հողի մէջ, ու պտուղ կու տա-
յին՝ որը [illegible] հարիւր, որը
9 վաթսուն, և որը երեսուն ։ Ան
որ լսելու ականջ ունի, թող լսէ ։
10 Ու աշակերտները մօտենալով՝
ըսին իրեն . Ինչու համար առակ-
11 ներով կը խօսիս անոնց ։ Ան ալ
պատասխան տուաւ՝ ու ըսաւ ա-
նոնց . Անոր համար՝ որ ձեզի տր-
ուած է գիտնալ երկնից թագա-

Յամի Տեառն 31

Եբր. զ. 4 ։ ժ. 26 ։ Բ Պետ. բ. 20, 21, 22 ։ Մար. գ. 31 ։ Ղու. ը. 19, 20, 21 ։ Գլ. ժգ. 55 ։ Մար. զ. 3 ։ Յով. բ. 12 ։ Գործ. ա. 14 ։ Կոր. թ. 5 ։ Գաղ. ա. 19 ։ Տես Յով. ժե. 14 ։ Գաղ. ե. 6 ։ զ. 15 ։ Կող. գ. 11 ։ Եբր. բ. 11 ։

Մար. դ. 1 ։ Ղու. ը. 4 ։ Ղու. ե. 3 ։ Ղու. ը. 5 ։ Ծն. իզ. 12 ։ Գլ. ժա. 15 ։ Մար. դ. 9 ։ Գլ. ժա. 25 ։ ժզ. 17 ։ Մար. դ. 11 ։ Ա Կոր. բ. 10 ։ Ա Յով. բ. 27 ։

Ցամ Տեառն
31

ըԳՂ․ ԻԵ․ 29 ։ Մար․ Դ․ 25 ։ Ղու․ Ը․ 18 ։ ԺԹ․ 26 ։

ԲԵս․ Զ․ 9 ։ Եզեկ․ ԺԲ․ 2 ։ Մար․ Դ․ 12 ։ Ղու․ Ը․ 10 ։ Յոհ․ ԺԲ․ 40 ։ Գոր․ ԻԸ․ 26 ․ 27 ։ Հռով․ ԺԱ․ 8 ։ Բ Կոր․ Գ․ 14, 15 ։

ԺԵբր․ Ե․ 11 ։

ԷԳՂ․ ԺԶ․ 17 ։ Ղու․ Ժ․ 23, 24 ։ Յոհ․ Ի․ 29 ։

ԼԵբր․ ԺԱ․ 13 ։ Ա Պետ․ Ա․ 10, 11 ։

ԽՄար․ Դ․ 14 ։ Ղու․ Ը․ 11 ։

ԾԳՂ․ Դ․ 23 ։

ԿԵս․ ԺԸ․ 2 ։ Եզեկ․ ԼԳ․ 31 ․ 32 ։ Յոհ․ Ե․ 35 ։

ՀԳՂ․ ԺԱ․ 6 ։ Բ Տիմ․ Ա․ 15 ։

ՁԵրեմ․ Գ․ 3 ։

ՂԳՂ․ ԺԹ․ 23 ։ Մար․ Ժ․ 23 ։ Ղու․ ԺԸ․ 24 ։ Ա Տիմ․ Զ․ 9 ։ Բ Տիմ․ Դ․ 10 ։

ւթեանը խորհուրդները , և
12 անոնց տրուած չէ ։ ըՎասն զի ով
որ ունի, անոր պիտի տրուի ու պի-
տի աւելնայ ․ և ով որ չունի , ու-
նեցածն ալ անկէ պիտի առնուի ։
13 Անոր համար առակներով կը խօսիմ
անոնց , որ կը տեսնեն՝ ու չեն
տեսներ , և կը լսեն՝ ու չեն լսեր ,
14 ու միտք չեն առներ ։ Եւ անոնց
վրայ կը կատարուի Եսայիին մար-
գարէութիւնը՝ որ կ'ըսէ ․ ԲԼսելով
պիտի լսէք՝ ու պիտի չիմանաք , և
տեսնելով պիտի տեսնէք՝ ու պիտի
15 չտեսնէք ։ Ինչու որ ասս ժողո-
վուրդին սիրտը թանձրացաւ , և
Ժ իրենց ականջներովը ծանր լսեցին ,
ու աչքերնին գոցեցին , որ չըլլայ
թէ բնաւ աչքերով տեսնեն , և ա-
կանջներով լսեն , և սրտով իմա-
նան , ու դարձի գան , և ես անոնք
16 բժշկեմ ։ Բայց Էերանի է ձեր աչ-
քերուն՝ որ կը տեսնեն , ու ձեր ա-
17 կանջներուն՝ որ կը լսեն ։ Քանզի
ճշմարիտ կ'ըսեմ ձեզի , որ Լշատ
մարգարէներ և արդարներ փափա-
քեցան ձեր տեսածները տեսնելու՝
ու չտեսան , և ձեր լսածները լսելու՝
ու չլսեցին ։
18 ԽՀիմա դուք սերմ ցանողին ա-
19 ռակը լսեցէք ։ Ան ամէնը որ Ծ թա-
գաւորութեան խօսքը կը լսէ ու
միտք չառներ , չարը կու գայ՝ ու
անոր սրտին մէջ ցանուածը կը
յափշտակէ ․ ասիկայ ան է՝ որ ճամ-
20 բուն քովը ցանուեցաւ ։ Եւ ապա-
ռաժուտ տեղերու վրայ ցանուածը
ան է՝ որ երբ կը լսէ խօսքը , շուտ մը
Կուրախութեամբ կ'ընդունի զա-
21 նիկայ ․ Բայց իր մէջը արմատ չու-
նենալով՝ քիչ ժամանակ կը տևէ ․
ու երբոր նեղութիւն կամ հալա-
ծանք ըլլայ խօսքին համար , շուտ մը
22 Հկը գայթակղի ։ Եւ Ձփուշերուն
մէջ ցանուածը Ղան է՝ որ երբ կը
լսէ խօսքը , աշխարհիս զբաղմունքը՝
և հարստութեան խաբէութիւնը
խօսքը կը խեղդեն , ու կ'ըլլայ ան-
23 պտուղ ։ Իսկ աղէկ հողի մէջ
ցանուածը ան է՝ որ երբ կը լսէ
խօսքը , միտք կ'առնէ , և պտուղ
կու տայ՝ որը հարիւր , որը վաթ-
սուն , ու որը երեսուն ։
24 Ուրիշ առակ մըն ալ յառաջ
բերաւ անոնց՝ ու ըսաւ ․ Երկնից
թագաւորութիւնը նմանեցաւ մէկ
մարդու մը , որ իր արտին մէջ բա-
25 րի սերմ ցանեց ․ Ու երբոր մարդիկ
կը քնանային , իր թշնամին եկաւ ,
ու ցորենին մէջ որոմ ցանեց , և
26 գնաց ․ Ու երբոր խոտը բուսաւ՝
ու պտուղ բերաւ , անկէ ետև ո-
27 րոմն ալ երևցաւ ։ Ուստի տա-
նուտիրոջը ծառաները մօտեցան՝ ու
իրեն ըսին ․ Տէ՛ր՝ չէ՞ որ դուն քու
արտիդ մէջ բարի սերմ ցանեցիր ,
28 ուրեմն՝ որոմը ո՞ւսկից ունի ։ Եւ
անիկայ ըսաւ անոնց ․ Մէկ թշնա-
մի մարդ մը ըրած է ատիկայ ․ Ծա-
ռաները իրեն ըսին ․ Հիմա կ'ու-
զե՞ս որ երթանք անիկայ մէկդի
29 քաղենք ։ Ան ալ ըսաւ ․ Չէ ․
չըլլայ թէ որոմը քաղած ատեննիդ՝
ցորենն ալ անոր հետը փրցընէք ։
30 Թող տուէք որ երկուքն ալ մէկ-
տեղ աճին մինչև հունձքի ատենը ․
և հունձքին ատենը հնձողներուն պի-
տի ըսեմ ․ Առաջ որոմը քաղեցէք ,
և անիկայ խուրձ խուրձ կապեցէք
այրելու համար , իսկ Ճցորենը իմ
ամբարս ժողվեցէք ։
31 Ուրիշ առակ մըն ալ յառաջ
բերաւ անոնց՝ ու ըսաւ ․ Մ Երկնից
թագաւորութիւնը մանանեխի հա-
տի նման է , որն որ մարդ մը առաւ՝
32 իր արտին մէջը ցանեց ․ Որ ամէն
սերմերէն պզտիկ է , ու երբոր աճի
ամէն խոտեղէններէն մեծ է , ու
ծառ կ'ըլլայ , անանկ որ՝ երկնից
թռչունները կու գան , և անոր
ճիւղերուն վրայ կը հանգչին ։
33 Յ Ուրիշ առակ մըն ալ զրուցեց
անոնց՝ ու ըսաւ ․ Երկնից թագա-
ւորութիւնը խմորի նման է , որն
որ կնիկ մը առաւ՝ իրեք գրիւ ալիւ-
րի մէջ պահեց , մինչև որ ամէնն
ալ խմորեցաւ ։
34 Յիսուս Նաս ամէն բաները առակ-
ներով խօսեցաւ ժողովուրդին , ու
առանց առակի բան մը չէր խօսեր
35 անոնց ․ Որ կատարուի մարգարէին
ձեռքով ըսուած խօսքը ․ ՇԱռակ-
ներով պիտի բանամ իմ բերանս ․
Ոաշխարհի սկիզբէն 'ի վեր ծած-
կուած բաները յառաջ պիտի բե-
րեմ։
36 Ան ատենը Յիսուս ժողովուրդ-
ները թողուց , տունը եկաւ ․ և
իր աշակերտները մօտեցան իրեն՝ ու
ըսին ․ Արտին որոմներուն առակը
37 մեկնէ՛ մեզի ։ Ան ալ պատասխան
տուաւ՝ ու ըսաւ անոնց ․ Բարի
սերմը ցանողը Որդին մարդոյ է ․
38 Եւ Չարտը աշխարհս է ․ իսկ բարի
սերմը անոնք են , որ թագաւորու-
թեանը որդիքն են ․ բայց որոմը
39 Պչարին որդիքն են ․ Եւ թշնամին՝
որ անիկայ ցանեց , Սատանան է ․
ու Ջհունձքը՝ աշխարհիս վերջն է ․ և
40 Ռհնձողները՝ հրեշտակներն են ։ Արդ՝
ինչպէս որ որոմը կը ժողվուի՝ ու
կրակի մէջ կ'այրի , աշխարհիս
վերջն ալ անանկ պիտի ըլլայ ։
41 Որդին մարդոյ իր հրեշտակները
պիտի խրկէ , ու Սպիտի ժողվեն ա-
նոր թագաւորութենէն բոլոր գայ-
թակղութիւնները՝ և անոնք որ ա-

Ցամ Տեառն
31

ՃԳՂ․ Գ․ 12 ։

ՄԵս․ Բ․ 2 , 3 ։ Միք․ Դ․ 1 ։ Մար․ Դ․ 31 ։ Ղու․ ԺԳ․ 18, 19 ։

ՅՂու․ ԺԳ․ 20 ։

ՆՄար․ Դ․ 33, 34 ։

ՇՍաղ․ ՀԸ․ 2 ։

ՈՀռով․ ԺԶ․ 25 , 26 ։ Ա Կոր․ Բ․ 7 ։ Եփե․ Գ․ 9 ։ Կող․ Ա․ 26 ։

ՉԳՂ․ ԻԴ․ 14 ։ ԻԸ․ 19 ։ Մար․ ԺԶ․ 15 , 20 ։ Ղու․ ԻԴ․ 47 ։ Հռով․ Ժ․ 18 ։ Կող․ Ա․ 6 ։

ՊԾն․ Գ․ 15 ։ Յոհ․ Ը․ 44 ։ Գոր․ ԺԳ․ 10 ։ Ա Յոհ․ Գ․ 8 ։

ՋՅովել․ Գ․ 13 ։ Յայտ․ ԺԴ․ 15 ։

ՍԳՂ․ ԺԸ․ 7 ։ Բ Պետ․ Բ․ 1, 2 ։

Ցամ Տեառն 31

ա Գլ. գ. 12։ Յայտ. ժթ. 20։ ի. 10։
Հ Գլ. ը. 12։
Հմր 50։
ո Դան. ժբ. 3։ ա Կոր. ժե. 42, 43։
ը Հմր 9։
ա Փիլ. գ. 7. 8։
Եա. ծե. 1։ Յայտ. գ. 18։
Առակ. ր. 4։ գ. 14. 15։ ր. 10. 19։
Գլ. իբ. 10։
Գլ. իե. 32։
Հմր 42։
Երգ. է. 13։
Գլ. ր. 23։ Մար. գ. 1։ Ղու. գ. 16։ 23։
Եա. խթ. 7։ Մար. գ. 3։ Ղու. գ. 23։ Յով. զ. 42։
Գլ. ժբ. 46։
Մար. ժե. 40։
Գլ. ժա. 6։ Մար. զ. 3։ 4։
Ղու. գ. 24։ Յով. դ. 44։
Մար. զ. 5. 6։

42 նօրէնութիւն կը գործեն, Ու կրա-
կի հնոցին մէջ պիտի ձգեն զանոնք .
հոն պիտի ըլլայ լաց ու ակռաներ
43 կճրտցընել ։ Ան ատենը արևի
պէս պիտի փայլին արդարները ի-
րենց Հօրը թագաւորութեանը
մէջ ։ Ան որ լսելու ական ունի,
թող լսէ ։
44 Դարձեալ երկնից թագաւորու-
թիւնը արտի մէջ պահուած գանձի
նման է, որ անիկայ մէկ մարդ մը
գտնելով կը ծածկէ . և ուրախու-
թենէն կ'երթայ բոլոր ունե-
ցածը կը ծախէ, ու ան արտը կը
գնէ ։
45 Դարձեալ երկնից թագաւորու-
թիւնը վաճառական մարդու մը նը-
ման է, որ գեղեցիկ մարգարիտներ
46 կը փնտռէ . Եւ մէկ պատուական
մարգարիտ մը գտնելով գնաց իր
բոլոր ունեցածը ծախեց, ու զանի-
կայ գնեց ։
47 Դարձեալ երկնից թագաւորու-
թիւնը ծովը ձգուած ուռկանի մը
նման է, որ ամէն տեսակէն կը ժող-
48 վէ ։ Որ երբոր լեցուեցաւ՝ ցամաքը
հանեցին, ու նստան աղէկները ա-
մաններու մէջ ժողվեցին, և անպա-
49 հը դուրս ձգեցին ։ Ասանկ պիտի
ըլլայ աշխարհիս վերջը . հրեշտակ-
ները պիտի ելլեն՝ ու արդարներուն
50 մէջէն չարերը պիտի զատեն, Եւ
պիտի ձգեն զանոնք կրակի հնոցին
մէջ . հոն պիտի ըլլայ լաց ու ակ-
ռաներ կճրտցընել ։
51 Ըսաւ անոնց Յիսուս . Հասկը-
ցա՞ք աս ամէն բաները . ըսին ա-
52 նոր . Այո՛ Տէր ։ Եւ անիկայ ը-
սաւ անոնց . Անոր համար ամէն դը-
պիր՝ որ երկնից թագաւորութեան
աշակերտեալ է, նման է տանուտէր
մարդու մը՝ որ իր գանձէն նոր ու
հին բաներ կը հանէ ։
53 Ու երբոր կատարեց Յիսուս աս
54 առակները, անկէ մեկնեցաւ . Եւ
եկաւ իր գաւառը, ու անոնց կը
սորվեցընէր՝ իրենց ժողովարանին
մէջը . մինչև որ կը զարմանային
անոնք՝ ու կ'ըսէին . Ասիկայ ո՞ւստից
ունի աս իմաստութիւնը և հրաշք-
55 ները . Ասիկայ հիւսնին որդին չէ՞ .
ասոր մայրը Մարիամ չը՞կոչուիր,
ու ասոր եղբայրները՝ Յակոբոս, և
Յովսէս, ու Սիմոն, և Յուդա ։
56 Ու ասոր քոյրերը՝ ամէնը մեր քովը
չե՞ն . ալ ինքը ո՞ւստից ունի աս
57 ամէն բաները ։ Եւ անոր վրայով
կը գայթակղէին . բայց Յիսուս ը-
սաւ անոնց . Մարգարէ մը անպա-
տիւ չէ՝ բայց միայն իր գաւառին ու
58 իր տանը մէջ ։ Եւ հոն շատ հը-
րաշքներ չըրաւ՝ անոնց անհաւա-
տութեանը համար ։

## ԳԼ. ԺԴ

1 Հերովդեսին կարծիքը Քրիստոսի վրայով ։ 8 Յովհաննէս մկրտչին գլխատուելուն պատճառը ։ 13 Յիսուս անապատ տեղ մը կ'երթայ ։ 15 ուր տեղ հինգ հազար հոգի կը կերակրէ հինգ նկանակով ու երկու ձուկով . 22 ծովուն վրայ քալելով իր աշակերտներուն կ'երթայ ։ 34 և Գեննեսարեթի ցամաքը ելնելով հիւանդները կը բժշկէ՝ անոնց իր հանդերձին ծայրին դպչելովը ։

Ցամ Տեառն 32

Յո. Տ. 32 ակիզբը
Մար. զ. 14։ Ղու. թ. 7։
Յո. Տ. 30
Մար. զ. 17։ Ղու. գ. 19. 20։
Յո. Տ. 31
Ղև. ժը. 16։ ի. 21։
Գլ. իա. 26։ Ղու. ի. 6։
Յո. Տ. 32
Գլ. ժ. 23։ ժբ. 15։ Մար. զ. 32։ Ղու. թ. 10։ Յով. զ. 1. 2։
Ու երբոր Յիսուս
Գլ. թ. 36։ Մար. զ. 34։
Մար. զ. 35։ Ղու. թ. 12։ Յով. զ. 5։

1 Այն ժամանակը Հերովդէս չորրոր-
դապետը Յիսուսին համբաւը
2 լսեց ։ Ու իր ծառաներուն ըսաւ .
Անիկայ Յովհաննէս մկրտիչն է .
անիկայ մեռելներէն յարութիւն ա-
ռած է, և անոր համար հրաշքներ
կ'ըլլան անով ։
3 Քանզի Հերովդէս՝ Յովհաննէսը
բռներ, զանիկայ կապեր ու բանտը
դրեր էր՝ իր եղբօրը Փիլիպպոսին
կնկանը Հերովդիային համար ։
4 Վասն զի Յովհաննէս անոր կ'ըսէր .
Քեզի օրինաւոր չէ անիկայ քեզի ու-
5 նենալ ։ Ուստի կ'ուզէր զանիկայ
սպաննել, բայց ժողովուրդէն կը
վախնար . Ինչու որ իբրև մար-
6 գարէ կ'ընդունէին զանիկայ ։ Ու
երբոր Հերովդեսին ծննդեան օրը
եղաւ, Հերովդիային աղջիկը խաղաց
հանդէսի օրուան մէջ, ու Հերովդէ-
7 սին հաճելի եղաւ ։ Ուստի երդու-
մով խոստացաւ՝ որ տայ անոր ինչ
8 որ ուզելու ըլլայ ։ Եւ անիկայ ա-
ռաջ իր մօրմէն խրատուելով ըսաւ .
Տուր ինծի հոս Յովհաննէս մկրտ-
չին գլուխը սկուտեղի մը վրայ ։
9 Եւ թագաւորը տրտմեցաւ . բայց
երդումներուն համար՝ ու իր հետը
նստողներուն համար՝ հրաման ըրաւ
10 որ տրուի ։ Եւ մարդ խրկելով
Յովհաննէսը բանտին մէջ գլխա-
11 տեց ։ Եւ անոր գլուխը սկուտե-
ղով բերուեցաւ ու տրուեցաւ
աղջկանը . ան ալ իր մօրը տա-
12 րաւ ։ Եւ անոր աշակերտները ե-
կան՝ ու մարմինը վերցընելով թա-
ղեցին . և գացին Յիսուսին պատ-
մեցին ։
13 Ու երբոր լսեց Յիսուս, անկէ
նաւով անապատ տեղ մը գնաց ա-
ռանձին . երբոր լսեցին ժողովուրդ-
ները՝ ոտքով անոր ետևէն գացին
իրենց քաղաքներէն ։
14 Ու երբոր դուրս ելաւ, շատ ժո-
ղովուրդ տեսնելով գթաց անոնց
վրայ, ու անոնց հիւանդները բժըշ-
կեց ։
15 Եւ իրիկուան դէմ՝ իր աշա-
կերտները իրեն եկան, ու ըսին .
Աս անապատ տեղ մըն է, և ժա-
մանակը ուշացած է . արձակէ ժո-
ղովուրդները, որ գեղերը երթան՝
16 ու իրենց կերակուր գնեն ։ Եւ
Յիսուս անոնց ըսաւ . Հարկ չէ

Յամի Տեառն 32

որ ատոնք երթան . դուք տուէք
17 ատոնց որ ուտեն ։ Անոնք ալ ըսին
անոր . Հոս ուրիշ բան մը չունինք .
բայց միայն հինգ նկանակ ու երկու
18 ձուկ ։ Ու ըսաւ անոնց . Հոս ինծի
19 բերէք զանոնք ։ Եւ հրաման ըրաւ
որ ժողովուրդները խոտին վրայ
նստին . և հինգ նկանակը ու երկու
ձուկը առաւ , ու դէպ 'ի երկինքը
նայելով՝ ըօրհնեց . ու կտրե-
լով նկանակները՝ աշակերտներուն
տուաւ , և աշակերտները ժողո-
20 վուրդին ։ Եւ ամէնքը կերան ու
կշտացան , և տասուերկու կողով
լեցուն՝ աւելցած կտորուանքները
21 վերցուցին ։ Եւ անոնք որ կերան ,
հինգ հազարի չափ էրիկ մարդիկ
էին՝ կնիկներէն և տղաքներէն 'ի
զատ ։

ը Գլ. ժե. 36։

22 ᵃԵւ շուտ մը աշակերտները ար-
տորցուց որ նաւը մտնեն , և իրմէ
առաջ մէկալ կողմը անցնին , մինչև
որ ինքը ժողովուրդները արձակէ ։
23 ᵇԵւ ժողովուրդները արձակելէն
ետքը՝ ինքը լեռը ելաւ առանձին
աղօթք ընելու . ու ᶜերբոր իրիկուն
24 եղաւ , հոն մինակ էր . Իսկ նաւը
արդէն ծովուն մէջտեղը ալէկոծու-
թեան մէջ էր , ինչու որ հովը դէմ
25 էր ։ Ու գիշերուան չորրորդ պա-
հուն Յիսուս դէպ 'ի անոնց գնաց՝
26 ծովուն վրայ քալելով ։ Եւ աշա-
կերտները երբոր անիկայ տեսան՝
որ ᵈծովուն վրայ կը քալէր , խռո-
վեցան , և ըսին թէ աչքի երևոյթ-
քան մըն է . ու վախերնուն կան-
27 չըռտեցին ։ Եւ շուտ մը Յիսուս
խօսեցաւ անոնց՝ ու ըսաւ . Քաջ
28 եղէք՝ ես եմ , մի՛ վախնաք ։ Պետ-
րոս պատասխան տուաւ անոր՝ ու
ըսաւ . Տէ՛ր թէ որ դուն ես , հրա-
ման ըրէ ինծի որ քեզի գամ ջու-
29 րերուն վրայէն ։ Ան ալ ըսաւ .
Եկո՛ւր . Պետրոս ալ նաւէն իջաւ ,
ջուրերուն վրայէն քալեց որ Յի-
սուսին քովը երթայ . բայց հովը
սաստիկ տեսնելով՝ վախցաւ , ու
երբոր սկսաւ ընկղմիլ , աղաղա-
30 կեց ու ըսաւ . Տէ՛ր ազատէ զիս ։
31 Եւ Յիսուս շուտ մը իր ձեռքը եր-
կընցուց , բռնեց զանիկայ՝ ու անոր
ըսաւ . Թե՛րահաւատ՝ ինչո՞ւ երկ-
32 մտեցար ։ Ու երբոր նաւը ե-
33 լան , հովը դադարեցաւ ։ Եւ ա-
նոնք որ նաւուն մէջն էին , եկան
երկրպագութիւն ըրին անոր՝ ու
ըսին . ᵉՃշմարիտ Աստուծոյ Որդին ես դուն ։
34 ᶠՈւ մէկալ կողմը անցնելով՝
Գեննեսարեթի երկիրը հասան ։
35 Ու երբոր ան տեղի մարդիկը ճանչ-
ցան զանիկայ , ղրկեցին
բոլոր շրջակայ տեղուանքը , ու

ա Որմանէ Եւ Յիսուս

բ Մար. զ. 46։

գ Յօհ. զ. 16։

դ Յոբ. Թ. 8։

ե Մարկ. բ. 7։ Մար. ա. 1։ Գլ. ժզ. 16։ Իզ. 63։ Ղու. դ. 42։ Յօհ. ա. 49։ զ. 70։ ժա. 27։ Գոր. ը. 37։ Հռով. ա. 4։

զ Մար. զ. 53։

բոլոր հիւանդները անոր բերին .
36 Եւ կ'աղաչէին անոր , որ միայն իր
հանդերձին քղանցքին դպչին . և
ծանոնք որ դպան՝ բժշկուեցան ։

Յամի Տեառն 32

ծ Գլ. Թ. 20։ Մար. դ. 10։ Ղու. զ. 19։ Գոր. ժԹ. 12։

## ԳԼ. ԺԵ

3 Քրիստոս կը յանդիմանէ դպիրները և փարի-
սեցիները՝ որոնք իրենց աւանդութեանց պատ-
ճառաւ զանց կ'ընէին Աստուծոյ պատուի-
րանքները . 11 ու կը սորվեցընէ թէ բերանը
մտած բանը մարդս չպղծեր . 21 կը բժշկէ
Քանանացի կնկանը աղջիկը . 30 և ուրիշ շատ
ժողովուրդներ . 32 եօթը նկանակով ու քանի
մը ձուկով չորս հազար էրիկ մարդիկ կը
կշտացընէ , կնիկներէն ու տղաքներէն 'ի զատ ։

1 Ա՛Ն ատենը ᵃՅիսուսին եկան դպիր-
ները ու փարիսեցիները՝ որ Ե-
րուսաղէմէն էին , ու ըսին .
2 ᵇԻնչո՞ւ քու աշակերտներդ ᶜծերե-
րուն աւանդութիւնը զանց կ'ը-
նեն . ինչու որ ձեռքերնին չեն
3 լուար , երբոր հաց կ'ուտեն ։ Ան
ալ պատասխան տուաւ՝ ու ըսաւ
անոնց . Հապա դուք ինչո՞ւ Աս-
տուծոյ պատուիրանքը զանց կ'ը-
նէք՝ ձեր աւանդութեանը պատ-
4 ճառաւ ։ Քանզի Աստուած պա-
տուիրեց՝ ըսելով . ᵈՔու հայրդ ու
5 մայրդ պատուէ . Եւ ᵉով որ իր
հայրը կամ մայրը անիծէ , մահով
6 թող մեռնի ։ Բայց դուք կ'ըսէք .
Ով որ իր հօրը կամ մօրը ըսէ թէ՝
ՆԱՆ բանը՝ որ ինծմէ պիտի շահիս ,
Աստուծոյ տուրք ընծայ է . ու թէ
որ իր հայրը կամ իր մայրը չպատ-
ուէ , ազատ է . և այսպէս ձեր ա-
ւանդութեանը պատճառաւ՝ Աս-
տուծոյ պատուիրանքը խափանած
7 էք ։ ᶠԿե՛ղծաւորներ՝ աղէկ մար-
գարէութիւն ըրաւ ձեր վրայ Եսա-
8 յին՝ ու ըսաւ . ᵍԱս ժողովուրդը
բերնով շրթունքներովը զիս կը պա-
տուէ . բայց իրենց սիրտը հեռա-
9 ցած զատուած է ինծմէ . Ու պա-
րապ տեղը զիս կը պաշտեն , ʰմար-
դոց պատուիրած բաները իբրև վար-
դապետութիւն սորվեցընելով ։
10 ⁱԵւ ժողովուրդները իրեն կան-
չելով՝ ըսաւ անոնց . Լսեցէ՛ք ու
11 մի՛տք առէք . ʲՉէ՛ թէ ինչ որ
բերանը կը մտնէ՝ կը պղծէ մարդը ,
հապա ինչ որ բերնէն կ'ելլէ՝ անի-
կայ կը պղծէ մարդը ։
12 Ան ատենը իր աշակերտները ե-
կան՝ ըսին իրեն . Գիտե՞ս որ փա-
րիսեցիները գայթակղեցան՝ երբոր
13 լսեցին ան խօսքը ։ Ան ալ պա-
տասխան տալով՝ ըսաւ . ᵏԱմէն
տունկ՝ որ իմ երկնաւոր Հայրս չէ
14 տնկեր , պիտի խլուի ։ Թող
տուէք անոնք . ˡԿոյրեր կոյր են՝
կոյրերու առաջնորդ . իսկ թէ որ
կոյրը կոյրին առաջնորդէ , երկուքն
15 ալ փոսը պիտի իյնան ։ Եւ ᵐՊետ-
րոս պատասխան տալով՝ անոր

ա Մար. է. 1։

բ Մար. է. 5։

գ Կող. բ. Տ։

դ Ել. ի. 12։ Ղև. ժԹ. 3։ Բօր. ե. 16։ Առակ. իգ. 22։ Եփե. զ. 2։

ե Ել. իա. 17։ Ղև. ի. 9։ Բօր. իէ. 16։ Առակ. ի. 20։ Լ. 17։

զ Մար. է. 11. 12։

է Մար. է. 6։

ը Ես. իԹ. 13։ Եզեկ. լգ. 31։

Թ Որմանէ բեր. նովը ինծի կմօտենայ, և շրթունք. ներովը

ժ Ես. իԹ. 13։ Կող. բ. 18—22։ Տիտ. ա. 14։

ի Մար. է. 14։

լ Գոր. ժ. 15։ Հռով. ժդ. 14. 17. 20։ ա Տիմ. դ. 4։ Տիտ. ա. 15։

խ Յօհ. ժե. 2։ ա Կոր. գ. 12, 13։

ծ Ես. Թ. 16։ Մաղ. բ. 8։ Գլ. իգ. 16։ Ղու. զ. 39։

կ Մար. է. 17։

Յամ. Տեառն 32

ըսաւ. Մեկնէ՛ մեզի աս առակը։
16 Ըսաւ Յիսուս. Դո՞ւք ալ տա-
17 կաւին անմիտ էք. Ու չէ՞ք հաս-
կընար, թէ ամէն ինչ որ բերանը
կը մտնէ, փորը կ'երթայ ու ար-
18 տաքնոցը կը ձգուի. Բայց բերնէն
ելած բաները սրտէն յառաջ կու
գան. և անոնք կը պղծեն մարդը։
19 Ինչու որ սրտէն կ'ելլեն չար
խորհուրդներ, սպանութիւններ,
շնութիւններ, պոռնկութիւններ,
գողութիւններ, սուտ վկայու-
թիւններ, հայհոյութիւններ։
20 Ասոնք են՝ որ կը պղծեն մարդը.
բայց անլուայ ձեռքով հաց ուտելը
չպղծեր մարդը։
21 Եւ Յիսուս անկէ ելլելով Տիւ-
րոսի ու Սիդոնի կողմերը գնաց։
22 Եւ ահա Քանանացի կնիկ մը ան
սահմաններէն ելած՝ կ'աղաղակէր
անոր ու կ'ըսէր. Ողորմէ՛ ինծի
Տէ՛ր՝ որդի՛ Դաւթի, աղջիկս դևէն
23 սաստիկ կը չարչարուի. Եւ ինքը
բնաւ պատասխան մը չտուաւ ա-
նոր. ու իր աշակերտները մօտե-
նալով կ'աղաչէին իրեն ու կ'ը-
սէին. Արձակէ՛ ատիկայ, վասն զի
24 մեր ետևէն կ'աղաղակէ։ Եւ ինքը
պատասխան տուաւ՝ ու ըսաւ. Ես
ուրիշի մը չղրկուեցայ՝ բայց միայն
Իսրայէլի տանը կորսուած ոչխար-
25 ներուն։ Եւ անիկայ եկաւ երկըր-
պագութիւն կ'ընէր անոր՝ ու կ'ը-
26 սէր. Տէ՛ր՝ օգնէ՛ ինծի։ Ան ալ
պատասխան տուաւ՝ ու ըսաւ. Ա-
ղէկ չէ՛ տղոց հացը առնել, ու
27 շուներուն ձգել։ Եւ անիկայ ը-
սաւ. Այո՛ Տէ՛ր. ինչու որ շու-
ներն ալ իրենց տիրոջը սեղանէն
թափած փշրանքներէն կը կերակ-
28 րուին։ Ան ատենը Յիսուս պա-
տասխան տուաւ անոր՝ ու ըսաւ.
Ո՛վ կին՝ քու հաւատքդ մեծ է.
քու ուզածիդ պէս ըլլայ քեզի. և
նոյն ժամէն անոր աղջիկը բժշկուե-
ցաւ։
29 Ու Յիսուս անկէ գնաց՝ Գալի-
լեայի ծովեզերքը եկաւ, և լեռը
30 ելլելով՝ հոն նստաւ։ Եւ շատ
ժողովուրդներ իրեն եկան, որ ի-
րենց հետ ունէին կաղեր, կոյրեր,
համրեր, հաշմանդամներ, և ուրիշ
շատեր. ու ձգեցին անոնք Յիսուսի
31 ոտքը, և բժշկեց զանոնք. Անանկ
որ ժողովուրդները զարմացան,
տեսնելով որ համրերը կը խօսէին,
հաշմանդամները կը բժշկուէին,
կաղերը կը քալէին, և կոյրերը կը
տեսնէին, ու Իսրայէլի Աստուածը
կը փառաւորէին։
32 Եւ Յիսուս իր աշակերտները
քովը կանչելով՝ ըսաւ. Կը խղճամ
աս ժողովուրդին վրայ. ինչու որ
հիմա իրեք օր է որ իմ քովս են. և
բան մը չունին ուտելու. ու անոնք
անօթի արձակել չեմ ուզեր, չըլ-
33 լայ որ ճամբան մարին։ Իսկ աշա-
կերտները անոր ըսին. Մենք ա-
նապատի մէջ ուսկից պիտի ունե-
նանք այնչափ հաց որ այսչափ
34 բազմութիւնը կշտացընենք։ Եւ
Յիսուս ըսաւ անոնց. Քանի՞ նկա-
նակ ունիք. անոնք ալ ըսին.
Եօթը, ու քանի մը մանր ձու-
35 կեր։ Եւ հրաման ըրաւ ժողո-
վուրդին որ գետնին վրայ նստին։
36 Ու եօթը նկանակը՝ և ձուկերը
առաւ, գոհացաւ՝ և կտրեց, ու
տուաւ աշակերտներուն, աշակերտ-
37 ներն ալ՝ ժողովուրդին։ Կերան
ամէնքը՝ և կշտացան, ու եօթը
զամբիւղ լեցուն աւելցած կտո-
38 րուանքները վերցուցին։ Եւ ա-
նոնք որ կերան՝ չորս հազար էրիկ
մարդիկ էին, կնիկներէն և տղաք-
ներէն 'ի զատ։
39 Ու երբոր ժողովուրդը արձա-
կեց, նաւը մտաւ, ու Մագդա-
ղայի սահմանները եկաւ։

Գղ. ժզ. 9. Մար. է. 18. Հակոբ. գ. 13. Յակ. գ. 6. Ծն. զ. 5. ը. 21. Առակ. զ. 14. Երեմ. ժէ. 9. Մար. է. 21. Մար. է. 24. Գղ. ժ. 5. 6. Գործ. գ. 25. 26. ժգ. 46. Հռով. ժե. 8. Գղ. ե. 6. Փիլ. գ. 2. Մար. է. 31. Գղ. դ. 18. Եսա. լե. 5. 6. Գղ. ժա. 5. Ղուկ. է. 22. Մար. ը. 1. Դ Թագ. դ. 43. Գղ. ժդ. 19. Թագ. ժ. 13. Ղուկ. իբ. 19. Մար. ը. 10.

## ԳԼ. ԺԶ.

1 Փարիսեցիք նշան մը կ'ուզեն։ 6 Յիսուս կը պատուիրէ իր աշակերտներուն՝ որ զգուշ ըլլան փարիսեցւոց և սադուկեցւոց խմորէն։ 13 Ժողովուրդին կարծիքը Քրիստոսի վրայով։ 16 և Պետրոսի դաւանութիւնը։ 21 Յիսուս կ'իմացընէ աշակերտներուն իր մահը. 23 կը յանդիմանէ Պետրոսը՝ որ կ'ուզէր դէմ կենալ. 24 և իրեն հետևիլ ուզողները կը խրատէ որ իրենց խաչը կրեն։

1 Եւ փարիսեցիները ու սադուկե-
ցիները քովը եկան՝ փորձելով
իրմէն կ'ուզէին որ երկինքէն նշան
2 մը ցուցընէ իրենց։ Անիկայ պա-
տասխան տուաւ՝ ու ըսաւ անոնց.
Երբոր իրիկուն կ'ըլլայ, կ'ըսէք
թէ՝ Պարզ օդ պիտի ըլլայ, ինչու որ
3 երկինքը կարմրած է։ Եւ առ-
տուանց՝ Այսօր մրրիկ պիտի ըլլայ,
ինչու որ երկինքը միգապատ ու
կարմրած է։ Կեղծաւորներ՝ եր-
կինքին երեսը քննելը գիտէք, բայց
ժամանակներուն նշանները չէ՞ք
4 կրնար գիտնալ։ Չար ու շնացող
ազգը նշան կ'ուզէ, և ուրիշ նշան
պիտի չտրուի անոր, բայց Յովնան
մարգարէին նշանը. և թողուց
անոնք՝ ու գնաց։
5 Ու երբոր իր աշակերտները մէ-
կալ կողմը անցան՝ հաց առնելու
6 մոռցեր էին։ Եւ Յիսուս անոնց
ըսաւ. Նայեցէ՛ք ու զգուշացէ՛ք
փարիսեցւոց և սադուկեցւոց խմո-
7 րէն։ Անոնք մէջերնին կը խորհէին՝
ու կ'ըսէին, թէ Հաց չբերինք
8 հետերնիս։ Իսկ Յիսուս անոնց խոր-
հուրդը գիտնալով՝ ըսաւ անոնց.
Մէջերնիդ ինչո՞ւ կը խորհիք՝ թէ-

Գղ. ժբ. 38. Մար. ը. 11. Ղուկ. ժա. 16. ժբ. 54—56. Ա Կոր. ա. 22. Գղ. ժբ. 39. Մար. ը. 14. Ղուկ. ժբ. 1.

Ցամ. Տեառն 32

բաժնուածներ, թէ հաց չառիք։
9 Տակաւին չէ՞ք հասկընար և չէ՞ք
յիշեր հինգ նկանակը՝ հինգ հազա-
րին, ու քանի կողով վերցուցիք։
10 Ո՞չ ալ եօթը նկանակը՝ չորս հա-
զարին, ու քանի զամբիւղ վեր-
11 ցուցիք։ Ի՞նչպէս չէք հասկընար՝
թէ ես հացի համար չըսի ձեզի՝
փարիսեցւոց և սադուկեցւոց խմո-
12 րէն զգոյշ կենալ։ Ան ատենը
հասկցան՝ որ հացի խմորէն զգու-
շանալ չըսաւ, հապա փարիսեցւոց
ու սադուկեցւոց վարդապետութե-
նէն։
13 Եւ Յիսուս Փիլիպպոսի Կեսա-
րիային կողմերը երթալով, իր ա-
շակերտներուն հարցուց՝ ու ըսաւ.
Մարդիկ ո՞վ կ'ըսեն թէ եմ ես
14 Որդի մարդոյ։ Ու անոնք ըսին.
Ոմանք կ'ըսեն թէ Յովհաննէս Մկըր-
տիչն է, ուրիշները՝ Եղիան, ու-
րիշներն ալ՝ Երեմիան, կամ մար-
15 գարէներէն մէկը։ Ըսաւ անոնց.
Հապա դուք ինծի համար ո՞վ
16 կ'ըսէք՝ թէ եմ։ Սիմոն Պետրոս
պատասխան տուաւ՝ ու ըսաւ.
Դուն ես Քրիստոս՝ կենդանի Աս-
17 տուծոյ Որդին։ Եւ Յիսուս պա-
տասխան տուաւ՝ ու ըսաւ անոր.
Երանի՝ քեզ Սիմոն՝ Յովնանին
որդին, ինչու որ մարմինը և ա-
րիւնը քեզի չյայտնեց ասիկայ, հա-
պա իմ Հայրս՝ որ երկինքն է։
18 Եւ ես քեզի կ'ըսեմ որ դուն
Պետրոս ես, ու այս վէմին վրայ
պիտի շինեմ իմ եկեղեցիս, և
դժոխքին դռները անիկայ պիտի
19 չյաղթեն։ Ու երկնից թագաւո-
րութեան բանալիները քեզի պիտի
տամ. և ինչ որ երկրի վրայ կա-
պես, երկինքի մէջ կապուած պի-
տի ըլլայ. ու ինչ որ երկրի վրայ
արձակես, երկինքի մէջ արձա-
20 կուած պիտի ըլլայ։ Ան ատենը
աշակերտներուն պատուիրեց, որ
մէկու մը չըսեն՝ թէ ինքը Քրիս-
տոսն է։
21 Անկէ ետև սկսաւ Յիսուս իր
աշակերտներուն ցուցընել՝ թէ
պէտք է որ ինքը Երուսաղէմ եր-
թայ, ու շատ չարչարանքներ կրէ
ծերերէն և քահանայապետներէն
ու դպիրներէն, և սպաննուի, ու
երրորդ օրը յարութիւն առնէ։
22 Եւ Պետրոս մէկդի առաւ զանի-
կայ, և սկսաւ յանդիմանել զա-
նիկայ՝ ու ըսել. Քաւ լիցի քեզ
23 Տէ՛ր, ատ բանը քեզի չըլլայ։ Եւ
ինքը դառնալով՝ Պետրոսին ըսաւ.
Ետիս գնա Սատանայ. ինծի
գայթակղութիւն ես դուն. ին-
չու որ Աստուծոյ բաները չես մը-
տածեր՝ հապա մարդոց բաները։
24 Ան ատենը Յիսուս իր աշա-
կերտներուն ըսաւ. Թէ որ մէկը
իմ ետևէս գալ կ'ուզէ, թող իր
անձը ուրանայ, և իր խաչը վեր-
25 ցընէ, ու իմ ետևէս գայ։ Վասն
զի ով որ կ'ուզէ իր անձը ապ-
րեցընել, պիտի կորսնցընէ անի-
կայ. և ով որ ինծի համար իր
անձը կը կորսնցընէ, պիտի գտնէ
26 անիկայ։ Քանզի ի՞նչ կը շահի
մարդ մը՝ թէ որ բոլոր աշխարհը
վաստըկի, և իր անձը կորսնցը-
նէ. կամ իր անձին համար ի՞նչ
աղատչէք պիտի տայ մարդ։
27 Վասն զի Որդին մարդոյ իր Հօրը
փառքովը պիտի գայ իր հրեշ-
տակներուն հետ. և ան ատենը
ամէն մէկուն իր գործքերուն հա-
մեմատ հատուցում պիտի ընէ։
28 Ճշմարիտ կ'ըսեմ ձեզի, որ հոս
ներկայ եղողներէն մէկ քանիները
կան՝ որոնք մահուան համը պիտի
չառնեն, մինչև որ տեսնեն Որդին
մարդոյ իր թագաւորութիւնովը
եկած։

## ԳԼ. ԺԷ

1 Քրիստոսի այլակերպութիւնը։ 14 Քրիստոս կը բժշկէ լուսնոտը. 22 կը նախաձայնէ իր չարչարանքները. 24 ու երկդրամեան տուրքը կը հատուցանէ։

1 Եւ վեց օրէն ետև Յիսուս իր
հետը առաւ Պետրոսը ու Յա-
կոբոսը և անոր եղբայրը Յովհան-
նէսը, ու անոնք մէկ բարձր լեռ մը
2 հանեց առանձին. Եւ անոնց առ-
ջևը այլակերպեցաւ, ու իր երեսը
փայլեցաւ արեգակի պէս, ու իր
հանդերձները ճերմըկցան լուսոյ
3 պէս։ Եւ ահա երևցան անոնց
Մովսէս ու Եղիա, ու իր հետը կը
4 խօսէին։ Պատասխան տուաւ
Պետրոս՝ ու ըսաւ Յիսուսին. Տէ՛ր,
աղէկ է որ հոս կենանք. թէ որ
կ'ուզես, իրեք խրճիթ շինենք
հոս, մէկը քեզի և մէկը Մովսէսին՝
5 ու մէկը Եղիային։ Եւ քանի որ
անիկայ կը խօսէր, ահա լուսաւոր
ամպ մը անոնց վրայ հովանի ե-
ղաւ. և ահա ամպէն ձայն մը եկաւ՝
ըսելով. Ասիկայ է իմ սիրելի
Որդիս, որուն հաւներ եմ. ա-
6 տոր մտիկ ըրէք։ Աշակերտները
երբոր լսեցին, երեսնուն վրայ ին-
7 կան, ու խիստ վախցան։ Եւ
Յիսուս մօտենալով դպաւ անոնց՝
ու ըսաւ. Ելէք ու մի վախնաք։
8 Աչքերնին վերցուցին՝ ու մէկը չտե-
սան, բայց միայն Յիսուսը։
9 Ու երբոր ան լեռնէն վար կ'իջ-
նէին, Յիսուս պատուիրեց անոնց՝
ու ըսաւ. Ատ տեսիլքը մարդու մի՛
զրուցէք, մինչև Որդին մարդոյ մե-
10 ռելներէն յարութիւն առնէ։ Եւ

Ի Գլ. ԺԴ. 17։ Յօհ. Զ. 9։ ... Ղ Գլ. ԺԵ. 34։
Ի Մար. Ը. 27։ Ղուկ. Թ. 18։
Է Գլ. ԺԴ. 2։ Ղուկ. Թ. 7, 8, 9։
Բ Գլ. ԺԴ. 33։ Մար. Ը. 29։ Ղուկ. Թ. 20։ Յօհ. Զ. 70։ Ժա. 27։ Գործ. Ը. 37։ Թ. 20։ Ա Յօհ. Դ. 15։ Ե. 5։ Եբր. Ա. 2, 5։
Ժ Եփե. Բ. 20։ Ի Ա Կոր. Ա. 10։ Գաղ. Ա. 16։
Լ Յօհ. Ա. 42։ Ի Վէմ
Ի Եփե. Բ. 20։ Յայտ. ԻԱ. 14։
Ժ Յոր. ԼԸ. 17։ Սաղ. Թ. 13։ ԾԷ. 18։ Եսա. ԼԸ. 10։
Ի Գլ. ԺԸ. 18։ Յօհ. Ի. 23։
Հ Գլ. ԺԵ. 9։ Մար. Ը. 30։ Ղուկ. Թ. 21։
Յ Գլ. Ի. 17։ Մար. Ը. 31։ Թ. 31։ Ժ. 33։ Ղուկ. Թ. 22։ ԺԸ. 31։ ԻԴ. 6, 7։
Ղ Տես Ա Թագ. ԺԹ. 22։
Ի Հռով. Ը. 7։

Ցամ. Տեառն 32

Ի Գլ. Ժ. 38։ Մար. Ը. 34։ Ղուկ. Թ. 23։ ԺԴ. 27։ Գործ. ԺԴ. 21։ Ա Թես. Գ. 3։ Բ Տիմ. Գ. 12։
Յ Ղուկ. ԺԷ. 33։ Յօհ. ԺԲ. 25։
Ն Սաղ. ԽԹ. 7, 8։
Ղ Գլ. ԻԶ. 64։ Մար. Ը. 38։ Ղուկ. Թ. 26։
Դան. Է. 10։ Զաք. ԺԴ. 5։ Գլ. ԻԵ. 31։ Յուդ. 14։
Ղ Յոբ. ԼԴ. 11։ Սաղ. ԿԲ. 12։ Առակ. ԻԴ. 12։ Երեմ. ԺԷ. 10։ ԼԲ. 19։ Հռով. Բ. 6։ Ա Կոր. Գ. 8։ Բ Կոր. Ե. 10։ Ա Պետ. Ա. 17։ Յայտ. Բ. 23։ ԻԲ. 12։
Ղ Մար. Թ. 1։ Ղուկ. Թ. 27։

Ա Մար. Թ. 1։ Ղուկ. Թ. 28։

Բ Բ Պետ. Ա. 17։

Գ Գլ. Գ. 17։ Մար. Ա. 11։ Ղուկ. Գ. 22։
Դ Եսա. ԽԲ. 1։
Ե Բ Օր. ԺԸ. 15, 19։ Գործ. Գ. 22, 23։
Զ Բ Պետ. Ա. 18։
Է Դան. Ը. 18։ Թ. 21։ Ժ. 10, 18։
Ը Գլ. ԺԶ. 20։ Մար. Ը. 30։ Թ. 9։

Ցամ Տեառն 32

ԲՄաղ . դ . 5 ։ Գւ . ժա . 14 ։ Մար . Թ . 10 ։
ԺՄաղ . դ . 6 ։ Ղու . ա . 16 . 17 ։ Կոր . գ . 21 ։
ԷԳւ . ժա . 14 ։ Մար . Թ . 11 . 12 ։
ԼԳւ . ժդ . 3 . 10 ։
ԽԳւ . ժկ . 21 ։
ԾԳւ . ժա . 14 ։
ԿՄար . Թ . 14 ։ Ղու . Թ . 37 ։

իր աշակերտները իրեն հարցուցին՝
ու ըսին . Ուրեմն Խ ինչո՞ւ համար
դպիրները կ'ըսեն թէ՝ պէտք է որ
11 առաջ Եղիան գայ ։ Պատասխան
տուաւ Յիսուս՝ ու ըսաւ անոնց .
Յիրաւի առաջ Եղիան կու գայ , և
12 ժամէն բան կարգի կը դնէ ։ Էբայց
ձեզի կ'ըսեմ , որ Եղիան արդէն
եկած է , և անիկայ չճանչցան ,
հապա Նինչ որ ուզեցին՝ ըրին
անոր . անանկ ալ Է Որդին մարդոյ
13 անոնցմէ պիտի չարչարուի ։ ԾԱն
ատենը հասկըցան աշակերտները ,
որ Յովհաննէս մկրտչին համար
ըսաւ անոնց ։
14 ԿՈւ երբոր ժողովուրդին քովը ե-
կան , մարդ մը մօտեցաւ անոր , և
ծունկ չոքելով կ'ըսէր . Տէ՛ր՝ իմ
որդւոյս ողորմէ՝ , որ կը լուսնոտի .
և չարաչար կը տանջուի . քանզի
շատ անգամ կրակի մէջ կ'իյնայ ,
15 ու շատ անգամ ջուրի մէջ ։ Եւ
անիկայ քու աշակերտներուդ
բերի , ու չկրցան զանիկայ բժշկել ։
16 Յիսուս պատասխան տուաւ՝ ու
ըսաւ . Ո՛վ անհաւատ և խոտորեալ
ազգ՝ մինչև ե՞րբ ձեզի հետ պիտի
ըլլամ , մինչև ե՞րբ ձեզի պիտի
համբերեմ . զանիկայ հոս ինծի
17 բերէք ։ Եւ Յիսուս սաստեց անոր ,
ու դևը անկէ ելաւ . և բժշկուեցաւ
18 տղան նոյն ժամէն ։ Ան ատենը
աշակերտները առանձին Յիսուսին
քովը երթալով ըսին . Մենք
ինչո՞ւ չկրցանք անիկայ հանել ։
19 Եւ Յիսուս ըսաւ անոնց . Ձեր
թերահաւատութեանը համար .
քանզի ճշմարիտ կ'ըսեմ ձեզի .
ՀԹէ որ մանանեխի հատի չափ
հաւատք ունենաք , աս լեռանս
պիտի ըսէք՝ Ասկէ անդին փոխա-
դրուէ , և պիտի փոխադրուի . ու
բան մը անճարին պիտի չըլլայ
20 ձեզի ։ Սակայն աս տեսակը ուրիշ
բանով չելլեր , բայց միայն ա-
ղօթքով և ծոմապահութեամբ ։
21 ՅՈւ երբոր անոնք Գալիլեայի
մէջ կը պտըտէին՝ Յիսուս ըսաւ
անոնց . Որդին մարդոյ պիտի
22 մատնուի մարդոց ձեռքը . Եւ
զանիկայ պիտի մեռցընեն , ու
երրորդ օրը յարութիւն պիտի
առնէ . ու խիստ տրտմեցան ։
23 ՆԵրբոր անոնք Կափառնայում
եկան , երկդրամեան առնողները
Պետրոսին եկան՝ ու ըսին .
Ձեր վարդապետը երկդրամեանը
չը՞հատուցաներ . Ու անիկայ ըսաւ .
24 Այո , կը հատուցանէ ։ Ու երբոր
տունը մտաւ , Յիսուս անոր դէմը
ելաւ՝ ու ըսաւ . Քեզի ի՞նչպէս
կ'երևնայ՝ Սիմոն . երկրիս թագա-
ւորները որմէ՞ն կ'առնեն հարկը

ՀԳւ . իա . 21 ։ Մար . ժա . 23 ։ Ղու . ժէ . 6 ։ ա Կոր . ժբ . 9 . ժգ . 2 ։
ՅԳւ . ժզ . 21 ։ ի . 17 ։ Մար . Ը . 31 ։ Թ . 29 . 30 ։ Ժ . 33 ։ Ղու . Թ . 22 . 44 ։ ժԸ . 31 ։ իդ . 6 . 7 ։
ՆՄար . Թ . 32 ։
Տե՛ս Ել . Լ . 13 ։ ԼԸ . 26 ։

կամ տուրքը , իրենց որդիներէ՞ն ,
25 թէ օտարներէն ։ Պետրոս անոր
ըսաւ՝ թէ Օտարներէն . Յիսուս
անոր ըսաւ . Ուրեմն որդիքը ա-
26 զատ են ։ Բայց չըլլայ որ անոնք
դայթակղեցընենք , գնա ծո՛վը և
կարթ ձգէ , ու առջի ձուկը որ
կ'ելլէ՝ առ , և անոր բերանը բանա-
լով սատեր մը պիտի գտնես . զա-
նիկայ առ՝ անո՛նց տուր ինծի և
քեզի համար ։

## ԳԼ . ԺԸ

1 Քրիստոս կը պատուիրէ իր աշակերտներուն խոնարհ ու հեզ ըլլալ . 7 գայթակղութիւն չտալ . և պզտիկները չանարգել . 15 կը սորվեցընէ թէ ինչպէս վարուելու ենք մեր եղբայրներուն հետ , երբոր անոնք մեզի դէմ մեղանչեն , 21 և թէ քանի անգամ ներելու ենք անոնց . 23 ասիկայ կը բացատրէ թագաւորի մը առակով , որ հաշիւ ուզեց իր ծառաներէն , 32 ու իր ընկերին ողորմութիւն չցուցընողը պատժեց ։

1 ԱՅոյն ժամանակը աշակերտները
Յիսուսին քովը եկան՝ ու ըսին .
Ո՞վ է մեծ երկնից թագաւորու-
2 թեանը մէջ ։ Եւ Յիսուս տղայ
մը կանչեց իրեն , զանիկայ անոնց
3 մէջտեղը կայնեցուց , Ու ըսաւ .
Ճշմարիտ կ'ըսեմ ձեզի , ԲԹէ որ
դարձի չգաք՝ և տղոց պէս չըլլաք .
երկնից թագաւորութիւնը բնաւ
4 պիտի չմտնէք ։ ԳՈւստի ո՛վ որ իր
անձը աս տղուն պէս խոնար-
հեցընէ , անիկայ է մեծ երկնից
5 թագաւորութեանը մէջ ։ Եւ Դո՛վ
որ ասանկ տղայ մը ընդունի իմ
6 անունովս . զիս կ'ընդունի ։ Եւ
Եո՛վ որ գայթակղեցընէ աս պզ-
տիկներուն մէկը՝ որ ինծի կը հա-
ւատան , աղէկ է անոր՝ որ իր
պարանոցէն իշու աղացքի քար մը
կախուի , ու ծովուն անդունդին
մէջ ընկղմի ։
7 Վա՜յ աշխարհին՝ գայթակղու-
թիւններու պատճառաւ . Զվասն
զի հարկ է որ գայթակղութիւն-
ները գան , բայց Էվա՜յ ան մարդուն՝
որուն ձեռքովը գայթակղութիւնը
8 կու գայ ։ ԸԱրդ՝ թէ որ քու ձեռքդ
կամ ոտքդ քեզ կը գայթակղեցընէ .
կտրէ՝ անիկայ՝ ու քեզմէ ձգէ . ա-
ղէկ է քեզի կաղ՝ կամ պակասաւոր
մտնել կեանքը , քան թէ երկու
ձեռք՝ կամ երկու ոտք ունենալ ,
ու յաւիտենական կրակին մէջը ձը-
9 գուիլ ։ Եւ թէ որ աչքդ քեզ
կը գայթակղեցընէ , հանէ անիկայ
և քեզմէ ձգէ . աղէկ է քեզի մէկ
աչքով կեանքը մտնել , քան թէ
երկու աչք ունենալ , ու կրակին
գեհեանը ձգուիլ ։
10 Զգո՛յշ կեցէք՝ որ չանարգէք աս
պզտիկներէն մէկը . քանզի կ'ըսեմ
ձեզի որ երկնից մէջ Թ անոնց հրեշ-

Ցամ Տեառն 32

ԱՄար . Թ . 32 ։ Ղու . Թ . 46 ։ իբ . 24 ։
ԲՍաղ . ճլա . 2 ։ Գւ . ժԹ . 14 ։ Մար . Ժ . 14 ։ Ղու . ժԸ . 16 ։ ա Կոր . ժդ . 20 ։ ա Պետ . Բ . 2 ։
ԳԳւ . ի . 27 ։ իԳ . 11 ։
ԴԳւ . Ժ . 42 ։ Ղու . Թ . 48 ։
ԵՄար . Թ . 41 ։ Ղու . ժէ . 1 . 2 ։
ԶՂու . ժէ . 1 ։ ա Կոր . ժա . 19 ։
ԷԳւ . իզ . 24 ։
ԸԳւ . Ե . 29 . 30 ։ Մար . Թ . 42 . 44 ։
ԹՍաղ . ԼԴ . 7 ։ Զաք . ժգ . 7 ։ Եբր . ա . 14 ։

Յամի Տեառն 32

ժ Եսթ. ա. 14։ Ղու. ա. 19։
ի Ղու. թ. 56։ ժթ. 10։ Յով. գ. 17։ ժբ. 47։
լ Ղու. ժե. 4։
* Ոմանք չը՞ձգեր, ու լեռները
խ Ղև. ժթ. 17։ Ղու. ժէ. 3։
ծ Յակ. ե. 20։ ա Պետ. գ. 1։
կ Բ Օր. ժէ. 6։ ժթ. 15։ Յով. ը. 17։ բ Կոր. ժգ. 1։ Եբր. ժ. 28։
հ Հռով. ժզ. 17։ ա Կոր. ե. 9։ բ Թես. գ. 6, 14։ բ Յով. 10։
ձ Գլ. ժզ. 19։ Յով. ի. 23։ ա Կոր. ե. 4։
ղ Գլ. ե. 24։
ճ ա Յով. գ. 2։ ե. 14։
մ Ղու. ժէ. 4։
յ Գլ. զ. 14։ Մար. ժա. 25։ Կող. գ. 13։
ն Դ Թագ. դ. 1։ Նեեմ. ե. 8։

տակները միշտ ժ կը տեսնեն իմ Հօ-
11 րըս երեսը՝ որ երկինքն է ։ ի Ինչու
որ Որդին մարդոյ եկաւ կորսուածը
12 փրկելու ։ լ Ի՞նչպէս կ՚երևնայ ձե-
զի . թէ որ մարդ մը հարիւր ոչ-
խար ունենայ , և անոնց մէկը մո-
լորի , իննսունինը ոչխարը * լեռ-
ները չը՞ձգեր , ու՞ երթար մոլորա-
13 ծը փնտռեր ։ Եւ թէ որ գտնե-
լու ըլլայ զանիկայ , ճշմարիտ կ՚ը-
սեմ ձեզի , որ աւելի ուրախ կ՚ըլ-
լայ անոր վրայ , քան թէ իննսու-
14 նուիննին՝ որ մոլորած չեն ։ Ասանկ
ալ ձեր երկնաւոր Հայրը՝ չհաճիր՝
որ աս պզտիկներէն մէկը կորսուի ։
15 խ Թէ որ քու եղբայրդ քեզի դէմ
մեղանչէ , գնա՛ յանդիմանէ անի-
կայ՝ երբոր դուն և ան մինակ էք .
թէ որ քեզի մտիկ ընէ , ծ շահեցար
16 քու եղբայրդ ։ Հապա թէ որ
մտիկ չընէ քեզի , քու հետդ մէկ
հոգի մը կամ երկո՛ւք ալ առ , որ
կ երկու կամ երեք վկաներու բերնէ
17 ամէն բան հաստատուի ։ Եւ թէ
որ անոնց ալ մտիկ չընէ , եկեղե-
ցիին ըսէ . իսկ թէ որ եկեղեցիին
ալ մտիկ չընէ , հ հեթանոսի ու
մաքսաւորի պէս թող ըլլայ քեզի ։
18 Ճշմարիտ կ՚ըսեմ ձեզի . ձ Երկ-
րի վրայ ինչ որ կապէք , երկինքի
մէջ կապուած պիտի ըլլայ . ու
երկրի վրայ ինչ որ արձակէք , եր-
կինքի մէջ արձակուած պիտի ըլ-
19 լայ ։ ղ Դարձեալ կ՚ըսեմ ձեզի .
թէ որ ձեզմէ երկու հոգի երկրի
վրայ միաբանին ամէն ինչ բանի
համար որ խնդրեն , ճ պիտի ըլլայ
անոնց իմ Հօրմէս՝ որ երկինքն է ։
20 Քանզի ուր որ երկու կամ երեք
հոգի ժողվուած ըլլան իմ անու-
նովս , հոն եմ ես անոնց մէջը ։
21 Ան ատենը Պետրոս մօտեցաւ ա-
նոր՝ ու ըսաւ . Տէ՛ր , քանի՞ անգամ
թէ որ եղբայրս ինծի դէմ մեղան-
չէ՝ ներեմ անոր . մ մինչև եօ՞թը
22 անգամ ։ Յիսուս անոր ըսաւ .
Քեզի չեմ ըսեր թէ մինչև եօթը
անգամ , յ հապա մինչև եօթանա-
23 սուն անգամ եօթը ։ Ասոր համար
երկնից թագաւորութիւնը կը նմա-
նի թագաւորի մը , որ իր ծառա-
24 ներէն հաշիւ առնել ուզեց ։ Ու
երբոր սկսաւ առնել , տասը հազար
տաղանդի պարտական մը բերուե-
25 ցաւ իրեն ։ Բայց անիկայ վճարե-
լու կարողութիւն չունենալով , իր
տէրը հրաման ըրաւ ն որ անիկայ՝ և
անոր կինը՝ ու որդիքը և անոր բո-
լոր ունեցածը ծախուի , ու պարտքը
26 վճարուի ։ Իսկ ծառան անոր առ-
ջևը իյնալով՝ երկրպագութիւն
կ՚ընէր ու կ՚ըսէր . Տէ՛ր՝ համբերէ
ինծի , և ամէնը քեզի կը վճարեմ ։
27 Եւ ան ծառային տէրը վրան խըղ-
ճալով՝ արձակեց զանիկայ , ու
28 պարտքը շնորհեց անոր ։ Եւ նոյն
ծառան ելաւ , իր՝ ծառայակիցնե-
րէն մէկը գտաւ՝ որ իրեն հարիւր
դահեկան պարտք ունէր , ու զա-
նիկայ բռնելով՝ կը խեղդէր , ու
կ՚ըսէր . Վճարէ ինծի ունեցած
29 պարտքդ ։ Ուստի անոր ծառա-
յակիցը անոր ոտքը ինկաւ , կ՚ա-
ղաչէր անոր՝ ու կ՚ըսէր . Համբե-
րէ ինծի , ու † քեզի կը վճարեմ ։
30 Եւ ինքը չէր ուզեր . հապա գնաց՝
բանտը դրաւ զանիկայ , մինչև որ
31 պարտքը վճարէ ։ Երբոր իր ծա-
ռայակիցները տեսան եղած բանե-
րը , խիստ տրտմեցան , ու եկան
իրենց տիրոջը հասկըցուցին բոլոր
32 եղածը ։ Ան ատենը անոր տէրը
կանչեց զանիկայ՝ ու ըսաւ անոր .
Չա՛ր ծառայ՝ ան բոլոր պարտքը ես
քեզի շնորհեցի՝ ինծի աղաչելուդ
33 համար . Ուրեմն պէտք չէ՞ր քե-
զի ալ քու ծառայակցիդ ողոր-
միլ , ինչպէս որ ես քեզի ողոր-
34 մեցայ ։ Եւ անոր տէրը բար-
կանալով՝ դահիճներուն մատ-
նեց զանիկա՛յ , մինչև որ բոլոր
35 պարտքը վճարէ ։ շ Ասանկ ալ իմ
երկնաւոր Հայրս պիտի ընէ ձեզի ,
թէ որ ձեր սրտերէն՝ չէք ներեր ,
ամէն մէկը իր եղբօրը , իրենց յան-
ցանքները ։

Յամի Տեառն 32

† Ոմանք ամէնը քեզի

շ Առակ. իա. 13։ Գլ. զ. 12։ Մար. ժա. 26։ Յակ. բ. 13։

## ԳԼ. ԺԹ

2 Քրիստոս կը բժշկէ հիւանդները . 3 պատասխան կու տայ կնիկ արձակելու վրայով փարիսեցւոց ըրած հարցմունքին . 13 մանր տղաքները կ՚օրհնէ . 16 կը սորվեցընէ պատանիին թէ ի՛նչպէս կրնայ ստանալ յաւիտենական կեանքը . 20 և թէ ի՛նչ ընելու է որ կատարեալ ըլլայ . 23 իր աշակերտներուն կ՚ըսէ թէ ի՛նչպէս դժուար է հարուստին՝ Աստուծոյ թագաւորութիւնը մտնել . 27 և վարձք կը խոստանայ անոնց՝ որ իր ետևէն երթալու համար որ և իցէ բան կը թողուն ։

1 Ու եղաւ որ երբ Յիսուս ա այս խօս-
քերը լմընցուց , Գալիլեայէն ե-
լաւ , ու եկաւ Հրէաստանի սահման-
ները Յորդանանու անդիի կողմը ։
2 բ Եւ անոր ետևէն շատ ժողովուրդ-
ներ գացին , ու հոն բժշկեց զանոնք ։
3 Եւ փարիսեցիները անոր մօտե-
նալով , զանիկայ կը փորձէին՝ ու
կ՚ըսէին թէ՝ Արժա՞ն է որ մարդ մը
իր կնիկը արձակէ ամէն պատճառի
4 համար ։ Անիկայ ալ պատասխան
տուաւ՝ ու անոնց ըսաւ . Չէ՞ք
կարդացեր , գ թէ ան որ սկիզբէն
ստեղծեց , արու և էգ ստեղծեց ա-
5 նոնք՝ ու ըսաւ . դ Ասոր համար
մարդ իր հայրը ու մայրը պիտի ձգէ ,
և իր կնկանը պիտի յարի , ու ե եր-
կուքը մէկ մարմին պիտի ըլլան ։
6 Ուստի ալ երկուք չեն , հապա մէկ

Յամ. Տ. 33

ա Մար. ժ. 1։ Յով. ժ. 40։
բ Գլ. ժբ. 15։
գ Ծն. ա. 27։ ե. 2։ Մաղ. բ. 15։
դ Ծն. բ. 24։ Մար. ժ. 5—9։ Եփե. ե. 31։
ե ա Կոր. զ. 16։ է. 2։

Յամի Տեառն
33

ղբ Օր. իդ. 1. Գլ. ե. 31.
ե Գլ. ե. 32. Մար. ժ. 11. Ղու. ժզ. 18. ա. Կոր. է. 10. 11.
զ Առակ. իա. 19.
ը ա Կոր. է. 2. 7. 9. 17.
ժ ա Կոր. է. 32. 34. լԹ. 5. 15.
ի Մար. ժ. 13. Ղու. ժը. 15.
լ Գլ. ժը. 3.
խ Մար. ժ. 17. Ղու. ժը. 18.
ծ Ղու. ժ. 25.
կ Ել. ի. 13. բ Օր. ե. 17.
հ Գլ. ժե. 4.
յ Ղև. ժԹ. 18. Գլ. իբ. 39. Հռով. ժգ. 9. Գաղ. ե. 14. Յակ. բ. 8.
ն Գլ. զ. 20. Ղու. ժբ. 33. ժզ. 9. Գոր. բ. 45. դ. 34. 35. ա Տիմ. զ. 18. 19.

մարմին. ուրեմն ան որ Աստուած
7 միաւորեց՝ մարդ թող չզատէ։ Ը-
սին իրեն. ՇՀապա Մովսէս ինչո՞ւ
պատուիրեց արձակման թուղթ
8 տալ՝ և արձակել։ Ըսաւ անոնց.
Մովսէս ձեր սրտերուն կարծրու-
թեանը համար ձեզի հրաման տուաւ
կնիկներնիդ արձակել. բայց սկիզ-
9 բէն անանկ չէղաւ։ ԷՍակայն ձե-
զի կ'ըսեմ. Ով որ առանց պոռ-
նըկութեան պատճառի իր կնիկը
արձակէ՝ և ուրիշ մը առնէ, շնու-
թիւն կ'ընէ. և ով որ արձակուա-
10 ծը առնէ՝ շնութիւն կ'ընէ։ Իր
աշակերտները ըսին իրեն. ԶԹէ որ
ատանկ բան կայ էրկան ու կնկան
մէջտեղը՝ չամուսնանալը աղէկ է։
11 Եւ ինքը անոնց ըսաւ. ԲԱմէնը
բաւական չեն աս բանին. հապա
12 անոնք՝ որոնց տրուած է։ Ինչու
որ կան ներքինիներ, որ իրենց մօրը
որովայնէն անանկ ծնան. և կան
ժներքինիներ, որ մարդոցմէ ներքի-
նի եղան. և կան ներքինիներ՝ որ
ինքզինքնին ներքինի ըրին երկնից
թագաւորութեանը համար. ո՛վ
որ կրնայ տանիլ, թող տանի։
13 ԻԱն ատենը մանր տղաք բերուե-
ցան իրեն, որ անոնց վրայ ձեռք
դնէ՝ և աղօթք ընէ, ու աշակերտ-
ները կը յանդիմանէին զանոնք։
14 Բայց Յիսուս ըսաւ. Թո՛ղ տուէք
լՄանր տղոցը, և մի՛ արգիլէք
ատոնք ինծի գալէն. ինչու որ
երկնից թագաւորութիւնը ա-
15 տանկներունն է։ Եւ անոնց վրայ
ձեռք դնելէն ետև՝ գնաց անկէ։
16 ԽԵւ ահա մէկը մօտենալով՝ ըսաւ
անոր. Բարի վարդապետ՝ ինչ
բարի գործ գործեմ, որ յաւիտե-
17 նական կեանքը ընդունիմ։ Եւ
անիկայ ըսաւ անոր. Ինչո՞ւ զիս
բարի կ'անուանես. մէկէն 'ի զատ
բարի չկայ, որ է Աստուած. հապա
թէ որ կ'ուզես կեանքը մտնել,
18 պատուիրանքները պահէ։ Ըսաւ
անոր. Որո՞նք. և Յիսուս ըսաւ.
Ասոնք. ԿՍպանութիւն մի՛ ըներ,
Շնութիւն մի՛ ըներ, Գողութիւն
մի ըներ, Սուտ վկայութիւն մի՛
19 ըներ, ՀՔու հայրդ ու մայրդ պա-
տուէ, և ՅՔու ընկերդ քու անձիդ
20 պէս սիրես։ Պատանին ըսաւ ա-
նոր. Ասոնք ամէնը մանկութենէս
'ի վեր պահեր եմ. ալ ի՞նչ բա-
21 նով պակաս եմ։ Ըսաւ անոր
Յիսուս. Թէ որ կ'ուզես կատա-
րեալ ըլլալ, Նգնա ունեցածդ ծա-
խէ, և տուր աղքատներուն, ու
երկինքը գանձ պիտի ունենաս, և
22 եկուր իմ ետևէս։ Երբոր պատա-
նին աս խօսքը լսեց՝ տրտմած գնաց,
ինչու որ շատ ստացուածք ունէր։

Յամի Տեառն
33

ծ Գլ. ժէ. 22. Մար. ժ. 24. ա Կոր. ա. 26. ա Տիմ. զ. 9. 10.
Օ Ոմանք պա. րանը
ի Ծն. ժը. 14. Յոբ. իբ. 2. Երեմ. լբ. 17. Զաք. ը. 6. Ղու. ա. 37. ժը. 27.
ջ Մար. ժ. 28. Ղու. ժը. 28.
ռ բ Օր. լգ. 9. Գլ. դ. 20. Ղու. ե. 11.
ս Յովն. վե. րստին ծնն. դեանը մէջ
տ Գլ. ի. 21. Ղու. իբ. 28. 29. 30. ա Կոր. զ. 2. 3. Յայտ. բ. 26.
ւ Մար. ժ. 29. 30. Ղու. ժը. 29. 30.
փ Գլ. ի. 16. իա. 31. 32. Մար. ժ. 31. Ղու. ժգ. 30.

23 Եւ Յիսուս ըսաւ աշակերտնե-
րուն. Ճշմարիտ կ'ըսեմ ձեզի՝ որ
ծհարուստը դժուարաւ պիտի մտնէ
24 երկնից թագաւորութիւնը։ Դար-
ձեալ կ'ըսեմ ձեզի. Դիւրին է որ
Օուղտը ասեղին ծակէն անցնի, քան
թէ հարուստը Աստուծոյ թագա-
25 ւորութիւնը մտնէ։ Աշակերտները
երբոր լսեցին, շատ զարմացան՝ ու
ըսին. Ուրեմն ո՞վ կրնայ փրկուիլ։
26 Յիսուս անոնց նայելով՝ ըսաւ.
Ատիկայ մարդոց կողմանէ անկա-
րելի է՝ բայց իԱստուծոյ կողմանէ
ամէն բան կարելի է։
27 ՋԱն ատենը Պետրոս պատասխան
տուաւ՝ ու ըսաւ անոր. Ահա ռմենք
ամէն բան թողուցինք՝ և քու ե-
տևէդ եկանք. ուստի մեզի ի՞նչ
28 պիտի ըլլայ։ Ըսաւ անոնց Յիսուս.
Ճշմարիտ կ'ըսեմ ձեզի, թէ դուք
որ իմ ետևէս եկաք, սմիւսանգամ
գալուստին" երբոր Որդին մարդոյ
իր փառաց աթոռը նստի, տդուք
ալ տասուերկու աթոռներու վրայ
պիտի նստիք՝ Իսրայէլի տասուեր-
29 կու ցեղերը դատելու։ ւԵւ ո՛վ որ
թողուց տուներ, կամ եղբայրներ,
կամ քոյրեր, կամ հայր, կամ
մայր, կամ կին, կամ որդիներ,
կամ արտեր՝ իմ անուանս համար,
հարիւրապատիկ պիտի առնէ, և
յաւիտենական կեանք պիտի ժա-
30 ռանգէ։ փԲայց շատ առաջիններ
պիտի ըլլան յետին, և յետիններ՝
առաջին։

ԳԼ. Ի

1 Քրիստոս այգիի բանւորներու առակով կը ցուցընէ թէ՝ Աստուած բնաւ մէկ մարդու մը պարտական չէ. 17 իր չարչարանքը կը նախածայնէ. 20 Զեբեդէոսի որդւոցը մօրը պատասխան տալով՝ կը սորվեցընէ իր աշակերտներուն խոնարհ ըլլալ. 30 ու երկու կոյրերու աչքերը կը բանայ։

1 Վասնզի երկնից թագաւորութիւ-
նը տանուտէր մարդու մը նման
է, որ առտուանց կանուխ ելաւ իր
այգիին համար բանւորներ բռնե-
2 լու։ Եւ բանւորներուն հետ օրը
մէկ դահեկանի մը խօսք կապեց, ու
3 զանոնք ղրկեց իր այգին։ Եւ
ժամը իրեքին ատենները ելաւ՝ ու-
րիշները տեսաւ, որ շուկային մէջ
4 պարապ կայներ էին. Ու ըսաւ ա-
նոնց. Դուք ալ գացէք իմ այգիս,
և ինչ որ արժան է կու տամ ձե-
5 զի։ Անոնք ալ գացին. ու նորէն
ժամը վեցին և ժամը իննին ատեն-
6 ները ելաւ՝ անանկ ըրաւ։ Եւ
ժամը տասնումէկին ատենները ե-
լաւ, ուրիշները գտաւ՝ որ պարապ
կայներ էին. ու անոնց ըսաւ.
Ինչո՞ւ հոս բոլոր օրը պարապ կայ-
7 ներ էք։ Ըսին իրեն. Անոր հա-
մար որ մէկը մեզ վարձքով չբռ-

Ցամի Տեառն 33

նեց . ըսաւ անոնց . Դուք ալ
այգին գացէք , ու ինչ որ արժան
է՝ պիտի առնէք ։ Եւ իրիկուն որ
եղաւ , այգիին տէրը իր տնտեսին
ըսաւ . Բանուորները կանչէ , և
անոնց վարձքը տուր , ետքիններէն
9 սկսելով՝ մինչև առաջինները ։ Ու
երբոր եկան անոնք որ ժամը տասը-
նումէկին գացեր էին , մէյմէկ դա-
10 հեկան առին . Եւ առաջինները գա-
լով՝ կը կարծէին որ աւելի պիտի
առնեն , ու անոնք ալ առին մէյմէկ
11 դահեկան ։ Երբոր առին , տանը
տիրոջը դէմ տրտունջ կ'ընէին ու
12 կ'ըսէին թէ՝ Ասոնք ետքինները մէկ
ժամ մը գործեցին , և անոնք հա-
ւասար ըրիր մեզի , որ օրուան ծան-
րութիւնը ու տաքութիւնը քաշե-
13 ցինք ։ Անիկայ պատասխան տուաւ
անոնցմէ մէկուն՝ ու ըսաւ . Ընկեր՝
ես քեզ չեմ զրկեր . չէ՞ որ դուն
իմ հետս մէկ դահեկանի մը խօսք
14 կապեցիր . Առ քուկդ՝ ու գնա ,
կ'ուզեմ որ աս ետքինին՝ քեզի
15 պէս տամ ։ Միթէ ես
իշխանութիւն չունի՞մ իմ բանե-
րուս վրայ՝ ինչ որ ուզեմ ընելու .
կամ թէ քու աչքդ չա՞ր է որ ես
16 բարերար եմ ։ Այսպէս յետիննե-
րը առաջին պիտի ըլլան , և առա-
ջինները՝ յետին . ինչու որ կան-
չուածները շատ են , բայց ընտ-
րուածները քիչ ։
17 Ու երբոր Յիսուս Երուսաղէմ
կ'ելլէր , ճամբան տասուերկու ա-
շակերտները հետը առաւ առան-
18 ձին , ու ըսաւ անոնց . Ահա Երու-
սաղէմ կ'ելլենք , և Որդին մարդոյ
պիտի մատնուի քահանայապետնե-
րուն ու դպիրներուն , և զանիկայ
մահուան պիտի դատապարտեն ,
19 Եւ զանիկայ հեթանոսներուն պի-
տի մատնեն՝ ծաղր ընելու ու ծեծե-
լու , և խաչը հանելու . ու երրորդ
օրը յարութիւն պիտի առնէ ։
20 Այն ատենը Զեբեդէոսին որ-
դւոցը մայրը իր որդւոցը հետ եկաւ
անոր , երկրպագութիւն կ'ընէր ու
21 բան մը կը խնդրէր անկէ ։ Ան ալ
ըսաւ անոր . Ի՞նչ կ'ուզես ։ Ը-
սաւ անոր . Ըսէ՛ որ աս իմ երկու
որդիքս՝ մէկը աջ կողմդ , և մէկալը
ձախ կողմդ նստին քու թագաւո-
22 րութեանդ մէջ ։ Պատասխան
տուաւ Յիսուս՝ ու ըսաւ . Չէք
գիտեր՝ ինչ կը խնդրէք . կրնա՞ք
խմել այն գաւաթը՝ որ ես պիտի
խմեմ , կամ այն մկրտութիւնովը
մկրտուիլ՝ որ ես պիտի մկրտուիմ .
23 Ըսին իրեն . Կրնանք . Եւ ըսաւ ա-
նոնց . Իմ գաւաթս պիտի խմէք ,
և այն մկրտութիւնովը՝ որ ես մկր-
տուելու եմ , պիտի մկրտուիք .

Հռով. Թ. 21 ։
Բ Օր. ԺԵ. 9 ։ Առակ. ԻԴ. 6 ։ Գլ. Զ. 23 ։
Գլ. ԺԹ. 30 ։
Գլ. ԻԲ. 14 ։
Մար. Ժ. 32 ։ Ղու. ԺԸ. 31 ։ Յով. ԺԲ. 12 ։
Գլ. ԺԶ. 21 ։
Գլ. ԻԷ. 2 ։ Մար. ԺԵ. 1. 16 ։ Ղու. ԻԳ. 1 ։ Յով. ԺԸ. 28 ։
Գործ. Գ. 13 ։
Մար. Ժ. 35 ։
Գլ. Դ. 21 ։
Գլ. ԺԹ. 28 ։
Գլ. ԻԶ. 39. 42 ։ Մար. ԺԴ. 36 ։ Ղու. ԻԲ. 42 ։ Յով. ԺԸ. 11 ։
Ղու. ԺԲ. 50 ։
Գործ. ԺԲ. 2 ։ Հռով. Ը. 17 ։ Բ Կոր. Ա. 7 ։ Յայտ. Ա. 9 ։

բայց իմ աջ կողմս ու ձախ կողմս
նստիլը՝ իմս չէ տալը , հապա
որոնց որ պատրաստուած է իմ
24 Հօրմէս ։ Ու երբոր մէկալ տասը
աշակերտները լսեցին , ան երկու եղ-
25 բայրներուն նեղացան ։ Իսկ Յի-
սուս իրեն կանչեց զանոնք՝ ու ը-
սաւ . Գիտէք որ ազգաց իշխան-
ները կը տիրեն անոնց , և մեծա-
26 մեծները կ'իշխեն անոնց . Բայց ձեր
մէջը այնպէս պիտի չըլլայ . հապա
ձեզմէ ով որ մեծ ըլլալ կ'ուզէ ,
թող անիկայ ձեր սպասաւո՛րը ըլ-
27 լայ . Ու ձեզմէ ով որ առաջին
ըլլալ կ'ուզէ , թող անիկայ ձեր
28 ծառան ըլլայ ։ Ինչպէս Որդին
մարդոյ չեկաւ սպասաւորութիւն
ընդունելու , հապա սպասաւո-
րութիւն ընելու , և իր կեանքը
շատերուն համար փրկանք տա-
լու ։
29 Ու երբոր անոնք Երիքովէն ե-
լան , մեծ բազմութիւն անոր ե-
30 տևէն գնաց ։ Եւ ահա՛ ճամբուն
քովը երկու կոյր նստած էին .
երբոր լսեցին թէ Յիսուս կ'անցնի ,
աղաղակեցին ու ըսին . Ողորմէ՛
31 մեզի Տէր՝ Որդի Դաւթի ։ Եւ
բազմութիւնը կը յանդիմանէր
զանոնք , որ լռեն . բայց անոնք
ալ աւելի կ'աղաղակէին ու կ'ըսէ-
ին . Ողորմէ՛ մեզի Տէր՝ որդի Դաւ-
32 թի ։ Եւ Յիսուս կանգ առնելով
կանչեց զանոնք՝ ու ըսաւ . Ի՞նչ
33 կ'ուզէք որ ձեզի ընեմ ։ Ըսին
անոր . Տէր՝ որ աչքերնիս բա-
34 ցուին ։ Եւ Յիսուս խղճալով՝
անոնց աչքերուն դպաւ . և շուտ
մը անոնց աչքերը բացուեցան , ու
անոր ետևէն գացին ։

## ԳԼ . ԻԱ

1 Քրիստոս իշու վրայ հեծած՝ Երուսաղէմ կը մտնէ . 12 տաճարէն դուրս կը վռնտէ սակաւորները . 17 թզենին կ'անիծէ . 23 կը պապանձեցընէ քահանաները ու ծերերը . 28 և կը յանդիմանէ զանոնք՝ օրինակ բերելով հօր մը երկու որդիները . 35 ու ան մշակները՝ որ իրենց խրկուածները սպաննեցին ։

1 Ու երբոր Երուսաղէմին մօտե-
ցան , ու եկան Բեթփագէ դէպ
՚ի Ձիթենեաց լեռը , ան ատենը
Յիսուս իր աշակերտներէն երկուքը
2 խրկեց . Եւ ըսաւ անոնց . Գացէ՛ք
աս ձեր դիմացի գեղը , և շուտ մը
պիտի գտնէք կապած էշ մը՝ ու
անոր հետ աւանակ մը . արձըկեցէ՛ք
3 անոնք՝ ու ինծի՛ բերէք . Եւ թէ
որ մէկը ձեզի բան մը ըսէ , ըսէ՛ք
թէ Տէրոջը պէտք են . և շուտ մը
4 անոնք պիտի խրկէ ։ Աս ամէն
բաները եղաւ , որ կատարուի մար-
5 գարէին խօսքը՝ որ կ'ըսէ . Ըսէ՛ք
Սիօնի աղջկանը . Ահա՛ քու թա-

Ցամի Տեառն 33
Գլ. Իե. 34 ։ Մար. Ժ. 41 ։ Ղու. ԻԲ. 24. 25 ։
Ղուկ. Ե. 3 ։
Գլ. ԻԳ. 11 ։ Մար. Թ. 34 ։ Ժ. 43 ։
Գլ. ԺԸ. 4 ։
Յով. ԺԳ. 4 ։
Փիլ. Բ. 7 ։
Ղու. ԻԲ. 27 ։ Յով. ԺԳ. 14 ։
Ես. ԾԳ. 10. 11 ։ Դան. Թ. 24. 26 ։ Յով. ԺԱ. 51. 52 ։ Ա Տիմ. Բ. 6 ։ Տիտ. Բ. 14 ։ Ա Պետ. Ա. 19 ։
Գլ. ԻԶ. 28 ։ Հռով. Ե. 15. 19 ։ Եբր. Թ. 28 ։
Մար. Ժ. 46 ։ Ղու. ԺԸ. 35 ։
Գլ. Թ. 27 ։
Մար. ԺԱ. 1 ։ Ղու. ԺԹ. 29 ։
Բ Զաք. ԺԴ. 4 ։
Ես. ԿԲ. 11 ։ Զաք. Թ. 9 ։ Յով. ԺԲ. 15 ։

Յամի Տեառն 33

դ Մար. ժա. 4։
ե Զաք. թ. 13։
զ Տե՛ս Ղև. իդ. 40։ Յոհ. ժբ. 13։
է Սաղ. ճժը. 25։
ը Սաղ. ճժը. 26։ Գլ. իգ. 39։
թ Մար. ժա. 15։ Ղու. ժթ. 45։ Յոհ. բ. 13. 15։
ժ Գլ. բ. 23։ Ղու. է. 16։ Յոհ. զ. 14։ է. 40։ թ. 17։
ի Մար. ժա. 11։ Ղու. ժթ. 45։ Յոհ. բ. 15։
լբ Օր. ժդ. 25։
ի Եսա. ծզ. 7։
ծ Երեմ. է. 11։ Մար. ժա. 17։ Ղու. ժթ. 46։
կ Սաղ. ը. 2։
հ Մար. ժա. 11։ Յոհ. ժա. 18։
ձ Մար. ժա. 12։
ղ Մար. ժա. 13։
ճ Մար. ժա. 20։
մ Գլ. ժե. 19։ Ղու. ժէ. 6։

գաւորդ քեզի կու գայ, հեզ՝ ու
իշու վրայ հեծած՝ և իշու ձագի
6 աւանակի վրայ ։ դԱշակերտները
գացին, և ինչպէս որ Յիսուս իրենց
7 պատուիրեր էր, ըրին. Ու բերին
էշը և աւանակը, և եանոնց վրայ
իրենց հանդերձները դրին, ու
8 նստաւ անոնց վրայ ։ Եւ ժողո-
վուրդէն շատերը իրենց հանդերձ-
ները ճամբուն վրայ փռեցին, և
զուրիշները ծառերէն ճիւղեր կը
կտրէին, ու ճամբուն վրայ կը տա-
9 րածէին ։ Եւ ժողովուրդները որ
առջևէն ու ետևէն կ'երթային,
կ'աղաղակէին ու կ'ըսէին. էՈվ-
սաննա որդւոյ Դաւթի. ըօրհնեալ
է ան՝ որ Տէրոջը անունովը կու
գայ. Ովսաննա 'ի բարձունս ։
10 թՈւ երբոր անիկայ Երուսաղէմ
մտաւ, բոլոր քաղաքը շարժեցաւ,
11 ու ըսաւ. Ո՞վ է աս ։ Եւ ժողո-
վուրդները ըսին. Ասիկայ Յիսուս
ժմարգարէն է՝ Գալիլեայի Նազա-
րեթէն ։
12 իԵւ Յիսուս Աստուծոյ տաճարը
մտաւ, ու դուրս հանեց ամէն ա-
նոնք՝ որ տաճարին մէջ կը ծախէ-
ին ու կը գնէին, և լստակ փոխող-
ներուն սեղանները՝ ու աղաւնի
ծախողներուն աթոռները կործա-
13 նեց. Եւ ըսաւ անոնց. Գրուած է
թէ՝ ԻԻմ տունս աղօթքի տուն
պիտի կոչուի, ծբայց դուք ատիկայ
աւազակներու այր ըրիք ։
14 Եւ տաճարին մէջ կոյրեր ու կա-
ղեր եկան իրեն, և բժշկեց զանոնք ։
15 Երբոր քահանայապետները ու դպ-
պիրները տեսան անոր ըրած հրաշք-
ները, և տղաքը որ տաճարին մէջ
կ'աղաղակէին ու կ'ըսէին, Ովսան-
նա որդւոյ Դաւթի, բարկացան.
16 Ու ըսին անոր. Կը լսե՞ս՝ ինչ
կ'ըսեն ատոնք. և Յիսուս ըսաւ
անոնց. Այո. ընաւ չէ՞ք կարդա-
ցեր, թէ կՄանկանց ու կաթնկեր
տղայոց բերնէն գովութիւն կատա-
րեցիր ։
17 Եւ թողուց անոնք՝ քաղաքէն
դուրս հԲեթանիա ելաւ, ու գի-
շերը հոն կեցաւ ։
18 ձԵւ առտուանց երբոր քաղաքը
19 կը դառնար, անօթեցաւ. ղՈւ
ճամբուն վրայ թզենի մը տեսնելով՝
քովը գնաց, և անոր վրայ տերև-
ներէն 'ի զատ բան մը չգտաւ. ու
ըսաւ անոր. Ասկէ ետև քեզմէ
պտուղ չըլլայ յաւիտեան. և իս-
20 կոյն թզենին չորցաւ ։ ճԵւ աշա-
կերտները երբոր տեսան, զարմա-
ցան ու ըսին, թէ Ինչպէս թզենին
21 շուտ մը չորցաւ ։ Յիսուս պա-
տասխան տուաւ՝ ու ըսաւ անոնց.
Ճշմարիտ կ'ըսեմ ձեզի. մԹէ որ
հաւատք ունենաք՝ ու չերկմտիք,
չէ թէ միայն աս թզենիին եղածը
պիտի ընէք, նհապա նաև թէ որ
աս լեռանը ըսէք՝ Ելի՛ր ու ծովը
22 ինկիր, պիտի ըլլայ ։ Եւ շամէն
ինչ որ աղօթքի մէջ հաւատքով
կը խնդրէք, պիտի առնէք ։
23 ոՈւ երբոր անիկայ տաճարը ե-
կաւ, քահանայապետները և ժո-
ղովուրդին ծերերը անոր մօտեցան՝
երբոր կը սորվեցընէր, ու ըսին.
Ի՞նչ իշխանութիւնով կ'ընես աս
բաները, և ո՞վ տուաւ քեզի
24 աս իշխանութիւնը ։ Պատասխան
տուաւ Յիսուս՝ ու ըսաւ անոնց. Ես
ալ ձեզի բան մը հարցընեմ, որ
եթէ անիկայ ինծի ըսէք, ես ալ
ձեզի պիտի ըսեմ թէ ինչ իշխա-
նութիւնով կ'ընեմ աս բաները ։
25 Յովհաննէսին մկրտութիւնը ո՞ւս-
կից էր. երկինքէ՞ն թէ մարդոցմէ.
և անոնք մէջերնին կը խորհէին՝ ու
26 կ'ըսէին. Թէ որ ըսենք՝ Երկին-
քէն, մեզի պիտի ըսէ թէ՝ Հապա
ինչո՞ւ չհաւատացիք անոր. իսկ
թէ որ ըսենք՝ Մարդոցմէ, ժողո-
վուրդէն կը վախնանք, ինչու որ
պբոլորն ալ Յովհաննէսը իբրև
27 մարգարէ կ'ընդունին ։ Եւ պատաս-
խան տալով Յիսուսին՝ ըսին.
Չենք գիտեր. և ինքը ըսաւ ա-
նոնց. Ես ալ ձեզի չեմ ըսեր թէ
ինչ իշխանութիւնով կ'ընեմ աս
բաները ։
28 Բայց ի՞նչպէս կ'երևնայ ձեզի.
Մէկ մարդ մը երկու որդի ունէր,
ու գնաց առջինին ըսաւ. Որդեա՛կ՝
գնա՛ այսօր այգիիս մէջ գործէ ։
29 Անիկայ պատասխան տուաւ՝ ու
ըսաւ. Չեմ ուզեր երթալ, բայց
30 ետքը զղջացաւ՝ ու գնաց ։ Մէկա-
լին ալ գնաց, և անանկ ըսաւ.
անիկայ պատասխան տուաւ՝ ու ը-
սաւ. Կ'երթամ՝ տէր. և չգնաց ։
31 Հիմա աս երկուքէն ո՞րը իր հօրը
կամքը կատարեց. ըսին անոր՝ Ա-
ռջինը. Յիսուս ըսաւ անոնց. ՉՃըշ-
մարիտ կ'ըսեմ ձեզի, որ մաքսա-
ւորները ու պոռնիկները ձեզմէ
առաջ կը մտնեն Աստուծոյ թա-
32 գաւորութիւնը ։ Ինչու որ ռՅով-
հաննէս արդարութեան ճամբայով
եկաւ ձեզի, և դուք անոր չհաւա-
տացիք. սբայց մաքսաւորները ու
պոռնիկները անոր հաւատացին. և
դուք տեսաք՝ ու ետքը չզղջացիք
անոր հաւատալու ։
33 Ուրիշ առակ մըն ալ լսեցէք.
Մէկ տանուտէր մարդ մը կար՝ տոր
այգի մը տնկեց, ու ցանգով պա-
տեց զանիկայ, և անոր մէջը հնձան
փորեց, ու աշտարակ շինեց. և
զանիկայ մշակներու յանձնեց, ու

Յամի Տեառն 33

յ Յակ. ա. 6։
ն Կոր. ժգ. 2։
շ Գլ. է. 7։ Մար. ժա. 24։ Ղու. ժա. 9։ Յակ. ե. 16։ ա Յոհ. գ. 22։ ե. 14։
ո Մար. ժա. 27։ Ղու. ի. 1։
չ Ել. բ. 14։ Գոր. դ. 7։ ե. 27։
պ Գլ. ժդ. 5։ Մար. զ. 20։ Ղու. ի. 6։
ջ Ղու. է. 29. 50։
ռ Գլ. գ. 1. [illegible]
ս Ղու. գ. 12. 13։
տ Սաղ. ձ. 9։ Երգ. ը. 11։ Եսա. ե. 1։ Երեմ. բ. 21։ Մար. ժբ. 1։ Ղու. ի. 9։

Յամ Տեառն 33

Գլ. իե. 14, 15. Երգ. Ը. 11, 12. Բ Մն. իդ. 21; լզ. 16; Նեեմ. Թ. 26; Գլ. Ե. 12; իգ. 34, 37; Գոր. Է. 52; Ա Թես. Բ. 15; Եբր. ԺԱ. 36, 37. Սաղ. Բ. 8; Եբր. Ա. 2. Սաղ. Բ. 2; Գլ. իզ. 3; իէ. 1; Յով. ԺԱ. 53; Գոր. Դ. 27. Գլ. իզ. 50, ... Մար. ԺԴ. 46, ... Ղու. իբ. 54, ... Յով. Ժբ. 12, ... Գոր. Բ. 23. Տես Ղու. Ի. 16. Ղու. իա. 24; Եբր. Բ. 2, 3. Գոր. ԺԴ. 46; ԺԵ. 7; ԺԲ. 6; իբ. 21; Հռով. Թ. Ժ. ԺԱ. Սաղ. ՃԺԸ. 22; Եսա. իբ. 16; Մար. ԺԲ. 10; Ղու. Ի. 17; Գոր. Դ. 11; Եփե. Բ. 20; Ա Պետ. Բ. 6, 7. Գլ. Ը. 12. Եսա. Ը. 14, 15; Զաք. ԺԲ. 3; Ղու. Ի. 18; Հռով. Թ. 33; Ա Պետ. Բ. 8. Եսա. Կ. 12; Դան. Բ. 44. Ղու. 11; Ղու. Է. 16; Յով. Է. 40.

34 ինքը օտար երկիր մը գնաց ։ Երբ-
որ պտուղի ժամանակը մօտեցաւ ,
իր ծառաները մշակներուն խրկեց ,
35 որ անոր պտուղները առնեն ։ Եւ
մշակները անոր ծառաները բռնե-
ցին , մէկը ծեծեցին՝ միւսը սպան-
նեցին՝ մէկ ուրիշը քարկոծեցին ։
36 Նորէն ուրիշ ծառաներ խրկեց՝
առջիններէն շատ , և անոնց ալ ա-
37 նանկ ըրին ։ Վերջը իր որդին
խրկեց անոնց՝ ըսելով . Գուցէ
38 ամչնան իմ որդիէս ։ Բայց մշակ-
ները երբոր տեսան որդին , իրարու
ըսին . Ասիկայ է ժառանգը , եկէ՛ք
զանիկայ սպաննենք , ու անոր ժա-
39 ռանգութեանը տիրենք ։ Եւ առին
զանիկայ՝ այգիէն դուրս հանեցին ,
40 ու սպաննեցին ։ Ուստի երբոր
այգիին տէրը գայ , ի՞նչ պիտի
41 ընէ ան մշակներուն ։ Ըսին իրեն .
Ան չարերը չարաչար պիտի կոր-
սնցընէ , և այգին պիտի յանձնէ
ուրիշ մշակներու , որոնք պտուղ-
ները իրենց ժամանակին պիտի
42 տան իրեն ։ Ըսաւ անոնց Յիսուս .
Բնաւ չէ՞ք կարդացեր գրքին մէջ ,
Ան քարը որ շինողները անարգե-
ցին , անիկայ անկիւնին գլուխը
եղաւ . ասիկայ Տէրոջմէ եղաւ , և
43 զարմանալի է մեր աչքերուն ։ Ասոր
համար կ՚ըսեմ ձեզի , որ Աս-
տուծոյ թագաւորութիւնը ձեզմէ
պիտի առնուի , ու անանկ ազգի
մը պիտի տրուի՝ որ անոր պտուղ-
44 ները բերէ ։ Եւ ո՛վ որ աս քարին
վրայ իյնայ՝ պիտի կոտրտի , և
որուն վրայ որ իյնայ՝ պիտի փշրէ
զանիկայ ։
45 Ու երբոր քահանայապետները՝ և
փարիսեցիները անոր առակները
լսեցին , իմացան որ իրենց համար
46 կ՚ըսէր ։ Եւ կը փնտռէին որ
բռնեն զանիկայ , բայց ժո-
ղովուրդէն վախցան . ինչու որ
մարգարէի պէս կ՚ընդունէին զա-
նիկայ ։

## ԳԼ. ԻԲ

1 Թագաւորի որդւոյն հարսնիքին առակը ։ 9 Հեթանոսներուն երկնից թագաւորութեան հրաւիրուիլը ։ 12 Հարսնիքի հանդերձ չունեցողին պատիժը ։ 15 Կայսրին տուրք տալու վրայով ։ 23 Քրիստոս փաստով կը ջրէ սադուկեցւոց մոլորութիւնը յարութեան վրայով. 34 պատասխան կու տայ օրինականին թէ որն է մեծ ու առաջին պատուիրանքը ։ 41 փարիսեցւոց հարցմունք կ՚ընէ Մեսիային վրայով , ու կը պապանձեցընէ զանոնք ։

1 Դարձեալ պատասխան տուաւ
Յիսուս՝ և առակներով ըսաւ
2 անոնց . Երկնից թագաւորութիւնը
թագաւոր մարդու մը կը նմանի ,
որ իր որդւոյն համար հարսնիք ը-
3 րաւ ։ Եւ իր ծառաները խրկեց՝ որ
կանչեն հարսնիքի հրաւիրուած-
ները . և անոնք չուզեցին գալ ։
4 Նորէն ուրիշ ծառաներ խրկեց՝ ու
ըսաւ . Ըսէ՛ք հրաւիրուածներուն .
Ահա՛ իմ ճաշս պատրաստեցի ,
զուարակներս ու գէր կենդա-
նիներս մորթուած են , և ամէն
բան պատրաստ է . հարսնիք
5 եկէք ։ Եւ անոնք անհոգութիւն
ընելով գացին , մէկը իր արտը , ու
6 մէկալը իր առուտուրին . Եւ
ուրիշները անոր ծառաները բռնե-
ցին , նախատեցին ու սպաննեցին ։
7 Թագաւորն ալ երբոր լսեց՝ բարկա-
ցաւ , և իր զօրքերը խրկեց՝ ու ան
սպաննողները սատկեցուց , ու
8 անոնց քաղաքը այրեց ։ Ան ատենը
իր ծառաներուն ըսաւ . Հարսնիքը
պատրաստ է՝ բայց հրաւիրուածնե-
9 րը արժանի չէին ։ Ուստի գացէ՛ք
ճամբու գլուխները , և ո՛վ որ գըտ-
նելու ըլլաք՝ հարսնիքի հրաւիրե-
10 ցէք ։ Եւ ան ծառաները ելան
ճամբաներուն վրայ , ու ո՛վ որ
գտան՝ թէ՝ չար և թէ բարի՝ ա-
մէնն ալ ժողվեցին . ու հարսնիքը
11 հարսնաւորներով լեցուեցաւ ։ Եւ
թագաւորը երբոր մտաւ հարսնե-
ւորները տեսնելու , հոն մէկ մարդ
մը տեսաւ , որ հարսնիքի հան-
12 դերձ հագած չէր . Եւ ըսաւ անոր .
Ընկե՛ր ինչո՞ւ համար հոս մտար ,
առանց հարսնիքի հանդերձ ունե-
նալու . և անիկայ պապանձեցաւ ։
13 Ան ատենը թագաւորը սպասաւոր-
ներուն ըսաւ . Կապեցէ՛ք ասոր
ոտքերը ու ձեռքերը , և առէ՛ք ու
հանեցէ՛ք զանիկայ դուրսի խա-
ւարը . հոն պիտի ըլլայ լալ ու ակ-
14 ռաներ կճռցընել ։ Ինչու որ կան-
չուածները շատ են , ու ընտ-
րուածները քիչ ։
15 Ան ատենը փարիսեցիները գա-
ցին խորհուրդ ըրին , թէ ինչպէս
անոր որոգայթ մը դնեն խօսքով ։
16 Եւ իրենց աշակերտները Հերով-
դեսեաններուն հետ մէկտեղ խրկե-
ցին անոր՝ ու ըսին . Վարդապե՛տ
գիտենք որ ճշմարիտ ես , և ճշմար-
տութեամբ Աստուծոյ ճամբան կը
սորվեցընես , ու մէկու մը համար
հոգդ չէ . քանզի մարդոց երես-
17 պաշտութիւն չես ըներ . Ուստի
մեզի ըսէ՛ , քեզի ի՞նչպէս կ՚երևնայ .
Կայսրին տուրք տալ արժա՞ն
18 է՝ թէ չէ ։ Յիսուս գիտնալով ա-
նոնց խորամանկութիւնը՝ ըսաւ .
Ինչո՞ւ զիս կը փորձէք՝ կե՛ղծաւոր-
19 ներ . Ցուցուցէ՛ք ինծի տուրքին
դրամը . և անոնք դահեկան մը բե-
20 րին իրեն ։ Ու ըսաւ անոնց . Ո-
րո՞ւնն է աս պատկերը ու գիրը ։
21 Ըսին անոր՝ Կայսրին . ան ատենը
ըսաւ անոնց . Ուրեմն ժան որ կայս-
րինն է՝ կայսրին տուէք , և ան որ

Յամ Տեառն 33

Բ Առակ. Թ. 2. Դան. Թ. 26; Ղու. ԺԹ. 27. Գլ. Ժ. 11, 13; Գոր. ԺԳ. 46. Գլ. ԺԳ. 35, 47. Բ Կոր. Ե. 3; Եփե. Դ. 24; Կող. Գ. 10, 12; Յայտ. Գ. 4; ԺԶ. 15; ԺԹ. 8. Գլ. Ը. 12. Գլ. Ի. 16. Մար. ԺԲ. 13; Ղու. Ի. 20. Գլ. ԺԷ. 25; Հռով. ԺԳ. 7.

Ղու. ԺԴ. 16; Յայտ. ԺԹ. 7, 9.

Յամի Տեառն 33

Աստուծոյն է՝ Աստուծոյ տուէք ։
22 Երբոր լսեցին՝ զարմացան , և թո-
ղուցին զանիկայ՝ ու գացին ։
23 ե Նոյն օրը անոր քովը եկան սա-
դուկեցիները , որոնք կ՚ըսեն թէ
յարութիւն չկայ , և անոր հար-
24 ցուցին՝ ըսելով . Վարդապետ՝
զ Մովսէս ըսաւ . Թէ որ մէկը ա-
ռանց զաւակի մեռնելու ըլլայ . ա-
նոր եղբայրը առնէ անոր կնիկը , և
25 իր եղբօրը զաւակ հանէ ։ Արդ՝
եօթը եղբայրներ կային մեր մէջը .
և առջինը կնիկ առաւ՝ ու մեռաւ ,
և զաւակ չունենալուն համար՝ իր
26 կնիկը ձգեց իր եղբօրը ։ Նոյնպէս
ալ երկրորդը՝ ու երրորդը՝ մինչև
27 եօթներորդը ։ Ամենէն ետքը կնիկն
28 ալ մեռաւ ։ Ուրեմն յարութեան
ատենը ան եօթնէն որո՞ւն կնիկը
պիտի ըլլայ . ինչու որ ամէնքն ալ
29 զանիկայ կնիկ ունեցան ։ Եւ Յի-
սուս պատասխան տալով՝ անոնց
ըսաւ . Դուք մոլորած էք , որ ծո՛չ
գիրքերը գիտէք՝ և ո՛չ Աստուծոյ
30 զօրութիւնը . Քանզի յարութեան
ատենը ոչ կնիկ կ՚առնեն՝ և ո՛չ էր-
կան կը տրուին . հապա էերկինքի
մէջ Աստուծոյ հրեշտակներուն պէս
31 են ։ Բայց մեռելներուն յարու-
թիւն առնելուն համար՝ չէ՞ք կար-
դացեր Աստուծմէ ձեզի ըսուած
32 խօսքը . ԷԵս եմ Աբրահամին Աս-
տուածը , և Իսահակին Աստուա-
ծը , ու Յակոբին Աստուածը .
Աստուած՝ մեռելներուն Աստուածը
33 չէ . հապա կենդանիներուն ։ Ու
ժողովուրդները լսելով՝ ժկը զար-
մանային անոր վարդապետութեա-
նը վրայ ։
34 ՂԲայց փարիսեցիները երբոր լսե-
ցին՝ թէ անիկայ պապանձեցուց
սադուկեցիները . մէկտեղ ժող-
35 վուեցան ։ ԺԵւ անոնցմէ մէկը՝ օրի-
նական մը՝ հարցուց , զանիկայ փոր-
36 ձելով , ու ըսաւ . Վարդապետ՝
ո՞ր պատուիրանքը մեծ է օրէնքին
37 մէջ ։ Եւ Յիսուս ըսաւ անոր .
ՃՔու Տէր Աստուածդ սիրես քու
բոլոր սրտովդ և քու բոլոր անձովդ
38 ու քու բոլոր մտքովդ . Աս է առա-
39 ջին ու մեծ պատուիրանքը ։ Ու
երկրորդը ասոր նման՝ ԺՔու ընկերդ
40 սիրես քու անձիդ պէս ։ ՆԱս եր-
կու պատուիրանքէս կախուած են
բոլոր օրէնքը և մարգարէները ։
41 ՇՈւ երբոր փարիսեցիները ժող-
վուեցան , Յիսուս հարցուց անոնց
42 ու ըսաւ . Քրիստոսի վրայով ի՞նչ
կարծիք ունիք . Անիկայ որո՞ւ որ-
43 դին է ։ Ըսին իրեն . Դաւիթին ։
Ըսաւ անոնց Յիսուս . Հապա
ի՞նչպէս Դաւիթ Հոգիո՛վ զանի-
44 կայ Տէր կը կոչէ՝ ու կ՚ըսէ . ՈՏէրը
իմ Տէրոջս ըսաւ . Նստէ իմ աջ
կողմս , մինչև որ քու թշնամիներդ
ոտքերուդ պատուանդան ընեմ ։
45 Ուրեմն թէ որ Դաւիթ զանիկայ
Տէր կը կոչէ , ի՞նչպէս անիկայ ա-
46 նոր որդին կ՚ըլլայ ։ ՉԵւ մէկը չէր
կրնար անոր խօսք մը պատասխա-
նել . Պու ան օրէն ետև մէկը չէր
համարձակեր անոր բան մը հարցը-
նելու ։

ԳԼ . ԻԳ

1 Քրիստոս խրատ կու տայ ժողովուրդներուն
որ դպրաց ու փարիսեցւոց բարի վարդապե-
տութեանը հետևին , և չէ թէ անոնց չար
օրինակներուն . 5 Նոյնպէս ալ իր աշակերտ-
ները կը խրատէ որ զգուշ կենան անոնց փառա-
սիրութենէն . 13 ութը անգամ վայ կու տայ
անոնց կեղծաւորութեանը և կուրութեանը .
34 ու Երուսաղէմի կործանումը կը նախա-
ձայնէ ։

1 Ա՛Ն ատենը Յիսուս խօսեցաւ ժո-
ղովուրդներուն և իր աշակերտ-
2 ներուն՝ ու ըսաւ . . ՌՄովսէսին
աթոռը դպիրները և փարիսեցիները
3 նստած են . Ուրեմն ինչ որ ձեզի
կ՚ըսեն՝ որ պահէք , պահեցէք ու
ըրէք . բայց անոնց գործքերուն պէս
մի ընէք . ինչու որ Ք կ՚ըսեն ու չեն
4 ըներ ։ Քանզի ՔԾանր և տանելու
դժուար բեռներ կը կապեն՝ ու կը
դնեն մարդոց ուսերուն վրայ , և
իրենց մատովը չեն ուզեր զանոնք
5 շարժել ։ Եւ Տ իրենց ամէն գործ-
քերը՝ մարդոց երևնալու համար կ՚ը-
նեն . Ւկը լայնցընեն իրենց գրապան-
ները , ու կ՚երկընցընեն իրենց հան-
6 դերձներուն քղանցքները . ՊԸնթ-
րիքներու մէջ առաջին բազ-
մոցները կը սիրեն , և ժողովարան-
ներուն մէջ առաջին աթոռները ,
7 ու շուկաներուն մէջ բարևները ,
Եւ մարդոցմէ ՙՌաբբի՛ Ռաբբի
8 կոչուիլ ։ Ւ Բայց դուք Ռաբբի
մի՛ կոչուիք . ինչու որ ձեր
Ուսուցիչը մէկ մըն է , Յիսուս
Քրիստոս , և դուք ամէնքդ եղ-
9 բայր էք ։ Ու երկրի վրայ մէկը ձեզի
Հայր մի՛ կոչէք . Էինչու որ ձեր
Հայրը մէկ մըն է , որ երկինքն է ։
10 Եւ դուք ուսուցիչներ մի՛ կոչուիք .
ինչու որ ձեր Ուսուցիչը մէկ մըն է ,
11 Յիսուս Քրիստոս ։ Եւ Ը ձեր մէջէն
մեծը ձեր սպասաւորը պիտի ըլլայ ։
12 ԺՈ՛վ որ իր անձը կը բարձրացընէ ,
պիտի խոնարհի . և ով որ իր ան-
ձը կը խոնարհեցընէ , պիտի բարձ-
րանայ ։
13 Բայց Ի վա՜յ ձեզի կեղծաւոր դպիր-
ներ ու փարիսեցիներ՝ որ երկնից
թագաւորութիւնը մարդոց առջևը
կը գոցէք . քանզի դուք չէք մտ-
ներ , և մտնողներն ալ չէք թողուր
14 որ մտնեն ։ Վա՜յ ձեզի կեղծաւոր
դպիրներ ու փարիսեցիներ՝ Լոր

Յամի Տեառն 33

ե Մար. ժբ. 18 ։ Ղու. ի. 27 ։
ը Գոր. իգ. 8 ։
է Բ Օր. իե. 5 ։
ծ Յոհ. ի. 9 ։
խ Յոհ. գ. 2 ։
Ել. գ. 6 ։ 16 ։ Մար. ժբ. 26 ։ Ղու. ի. 37 ։ Գոր. է. 32 ։ Եբր. ժա. 16 ։
Գլ. է. 28 ։
Մար. ժբ. 28 ։
Ղու. ժ. 25 ։
Բ Օր. զ. 5 ։ ժ. 12 ։ լ. 6 ։ Ղու. ժ. 27 ։
Ղև. ժթ. 18 ։ Գլ. ժթ. 19 ։ Մար. ժբ. 31 ։ Ղու. ժ. 27 ։ Հռով. ժգ. 9 ։ Գաղ. ե. 14 ։ Յակ. բ. 8 ։
Գլ. է. 12 ։ Ա Տիմ. ա. 5 ։
Մար. ժբ. 35 ։ Ղու. ի. 41 ։
Սաղ. ճժ. 1 ։ Գործ. բ. 34 ։ Ա Կոր. ժե. 25 ։ Եբր. ա. 13 ։ ժ. 12 ։ 13 ։
Ղու. ժդ. 6 ։
Մար. ժբ. 34 ։ Ղու. ի. 40 ։
Նեեմ. ը. 4. 8 ։ Մաղ. բ. 7 ։ Մար. ժբ. 38 ։ Ղու. ի. 45 ։
Հռով. բ. 19 ։ Ա ։
Ղու. ժա. 46 ։ Գործ. ժե. 10 ։ Գաղ. զ. 13 ։
Գլ. զ. 1 ։ 2 ։ 5 ։ 16 ։
Թուոց. ժե. 38 ։ Բ Օր. զ. 8 ։ իբ. 12 ։ Առակ. գ. 3 ։
Մար. ժբ. 38 ։ 39 ։ Ղու. ժա. 43 ։ ի. 46 ։ Գ Յոհ. 9 ։
Յակ. գ. 1 ։ Տե՛ս Բ Կոր. ա. 24 ։ Ա Պետ. ե. 3 ։
Մաղ. ա. 6 ։
Գլ. ի. 26 ։ 27 ։
Յոբ. իբ. 29 ։ Առակ. ժե. 33 ։ իթ. 23 ։ Ղու. ժդ. 11 ։ ժը. 14 ։ Յակ. դ. 6 ։ Ա Պետ. ե. 5 ։
Ղու. ժա. 52 ։
Մար. ժբ. 40 ։ Ղու. ի. 47 ։ Բ Տիմ. գ. 6 ։ Տիտ. ա. 11 ։

Ցամ Տեառն 33

որբեւայրիներուն տուները կ'ուտէք ,
ու մարդոց երեւնալու համար աղօթ-
քը կ'երկնցընէք · անոր համար
աւելի դատապարտութիւն պիտի
15 ընդունիք ։ Վա՜յ ձեզի կեղծաւոր
դպիրներ ու փարիսեցիներ՝ որ ծով
ու ցամաք կը պտըտիք մէկը նորա-
հաւատ ընելու . ու երբոր ըլլայ ,
զանիկայ ձեզմէ երկու անգամ աւելի
16 գեհենի որդի կ'ընէք ։ Վա՜յ ձեզի
ե կո՛յր առաջնորդներ՝ որ կ'ըսէք թէ՝
զ Ո՛վ որ տաճարին վրայ երդում
ընէ , բան մը չէ . բայց ո՛վ որ տա-
ճարին մէջի ոսկիին վրայ երդում
17 ընէ , պարտաւոր կ'ըլլայ ։ Ո՛վ
յիմարներ ու կոյրեր՝ ո՞րը մեծ է ,
ոսկի՞ն թէ տաճարը , որ կը սըր-
18 բացընէ ոսկին ։ Եւ թէ՝ Ո՛վ որ
սեղանին վրայ երդում ընէ , բան
մը չէ , բայց ո՛վ որ սեղանին վրայի
պատարագին վրայ երդում ընէ ,
19 պարտաւոր կ'ըլլայ ։ Յիմարներ
ու կոյրեր՝ ո՞րը մեծ է , պատարա՞գը
ը թէ սեղանը , որ կը սրբացընէ պա-
20 տարագը ։ Ուստի ո՛վ որ սեղանին
վրայ երդում ընէ , երդում կ'ընէ
անոր վրայ՝ և անոր վրայի ամէն բա-
21 ներուն վրայ . Եւ ո՛վ որ տաճարին
վրայ երդում ընէ , երդում կ'ընէ
անոր վրայ՝ և թ անոր մէջ բնակողին
22 վրայ . Եւ ո՛վ որ երկինքին վրայ
երդում ընէ , երդում կ'ընէ ժԱս-
տուծոյ աթոռին վրայ՝ և անոր վրան
23 նստողին վրայ ։ Վա՜յ ձեզի կեղծա-
ւոր դպիրներ ու փարիսեցիներ՝ ժա որ
անանուխին ու սամիթին և չամա-
նին տասանորդը կը վճարէք , ու
ժբ կը ձգէք օրէնքին ծանր ծանր բա-
ները՝ դատաստանը և ողորմու-
թիւնը ու հաւատքը . ասոնք
պէտք էր ընել , և անոնք չձգել ։
24 Կոյր առաջնորդներ՝ որ մժղուկը
կը քամէք , և ուղտը կը կլլէք ։
25 Վա՜յ ձեզի կեղծաւոր դպիրներ
ու փարիսեցիներ՝ որ ժգ գաւաթին
ու պնակին դուրսի կողմը կը
մաքրէք , ու ներսէն յափշտա-
կութեամբ և * անիրաւութեամբ
26 լեցուն են ։ Կո՛յր փարիսեցի՛ առաջ
գաւաթին ու պնակին ներսի կողմը
մաքրէ , որ անոնց դուրսի կողմն ալ
27 մաքուր ըլլայ ։ Վա՜յ ձեզի կեղծա-
ւոր դպիրներ ու փարիսեցիներ՝ ժդ որ
կը նմանիք ծեփած գերեզմաններու ,
որոնք դուրսէն գեղեցիկ կ'երեւան ,
և ներսէն մեռելներու ոսկորներով
և ամէն կերպ պղծութիւնով լեցուն
28 են ։ Նոյնպէս ալ դուք դուրսէն
մարդոց արդար կ'երեւնաք , ու ներ-
սէն կեղծաւորութեամբ և անօրէ-
29 նութեամբ լեցուն էք ։ ժե Վա՜յ ձեզի
կեղծաւոր դպիրներ ու փարիսե-
ցիներ՝ որ մարգարէներուն տապան-

ե Գլ. ԺԵ. 14 ։ Հմր 24 ։
զ Գլ. Ե. 33, 34 ։
է Ել. Լ. 29 ։
ը Ել. ԻԹ. 37 ։
թ Գ Թագ. Ը. 13 ։ Բ Մն. Զ. 2 ։ Սաղ. ԻԶ. 8 ։ ՃԼԲ. 14 ։
ժ Գլ. Ե. 34 ։ Սաղ. ԺԱ. 4 ։ Գործ. Է. 49 ։
ժա Ղուկ. ԺԱ. 42 ։
ժբ Ա Թագ. ԺԵ. 22 ։ Ովս. Զ. 6 ։ Միք. Զ. 8 ։ Գլ. Թ. 13 ։ ԺԲ. 7 ։
ժգ Մար. Է. 4 ։ Ղուկ. ԺԱ. 39 ։
* Ոմանք՝ անբարեխառնութեամբ
ժդ Ղուկ. ԺԱ. 44 ։ Գործ. ԻԳ. 3 ։
ժե Ղուկ. ԺԱ. 47 ։

ները կը շինէք , և արդարներուն
30 գերեզմանները կը զարդարէք . Ու
կ'ըսէք . Թէ որ մեր հայրերուն օ-
րերը ըլլայինք , անոնց հետ մար-
գարէներուն արեանը մասնակից չէ-
31 ինք ըլլար ։ Ուրեմն դուք ձեր վը-
րայ կը վկայէք՝ թէ ժզ անոնց զաւակ-
ներն էք՝ որ մարգարէները կը սպան-
32 նէին ։ Ուստի ժէ դուք ալ ձեր հայ-
33 րերուն չափը լեցուցէք ։ Օ՛ձեր՝
ժը իժերու ծնունդներ , ի՞նչպէս պի-
տի փախչիք գեհենին դատապար-
34 տութենէն ։ ժթ Ատոր համար՝ ահա՛
ես կը խրկեմ ձեզի մարգարէներ և
իմաստուններ ու դպիրներ , և ի ա-
նոնցմէ մէկ քանիները պիտի սպան-
նէք , ու խաչը հանէք , և իա մէկ քա-
նիները ձեր ժողովարաններուն
մէջը պիտի ծեծէք , ու քաղաքէ
35 քաղաք հալածէք . իբ Որպէս զի երկ-
րի վրայ թափուած բոլոր արդար
արիւնը ձեր վրայ գայ , իգ արդար Ա-
բելին արիւնէն՝ մինչև իդ Բարաքիա-
յի որդւոյն Զաքարիային արիւնը ,
որ տաճարին ու սեղանին մէջտեղը
36 սպաննեցիք ։ Ճշմարիտ կ'ըսեմ
ձեզի . Աս ամէն բաները պիտի գայ
աս ազգիս վրայ ։
37 իե Ո՛վ Երուսաղէմ՝ Երուսաղէմ ,
որ մարգարէները կը սպաննէիր ,
ու քեզի խրկուածները իզ կը քարկո-
ծէիր . քանի՛ անգամ քու որ-
դիքներդ ժողվել ուզեցի ինչպէս
որ հաւը իր ձագերը իէ թեւերուն տա-
կը կը ժողվէ , և դուք չուզեցիք ։
38 Ահա՛ ձեր տունը ձեզի աւերակ պի-
տի մնայ . ինչու որ ձեզի կ'ըսեմ ,
որ ալ ասկէ ետև պիտի չտեսնէք
զիս , մինչև որ ըսէք . իը Օրհնեա՜լ է
ան՝ որ Տէրոջը անունովը կու գայ ։

## ԳԼ. ԻԴ

1 Քրիստոս կը նախաձայնէ տաճարին կործա-
նումը , 3 անկէ առաջ հասնելու մեծ թշուա-
ռութիւնները , 29 և իր դատաստանի գալուն
նշանները ։ 36 Եւ ան օրը ու ժամը մեզի անծա-
նօթ ըլլալուն համար , 42 կը պատուիրէ որ
արթուն մնանք ան բարի ծառային պէս՝ որ
ամէն վայրկեան իր տիրոջը գալուն կը սպասէ ։

1 Ու ա Յիսուս տաճարէն դուրս
ելլելով կ'երթար . ու աշա-
կերտները բ անոր քովը գացին տա-
ճարին շէնքերը իրեն ցուցընելու ։
2 Եւ Յիսուս անոնց ըսաւ . Չէ՞ք
տեսներ աս ամէն բաները . Ճշմա-
րիտ կ'ըսեմ ձեզի , գ պիտի չմնայ
հոս քար քարի վրայ՝ որ չքակուի ։
3 Ու երբոր Ձիթենեաց
լեռը նստեր էր , դ աշակերտները ի-
րեն եկան առանձին՝ ու ըսին .
ե Ըսէ՛ մեզի՝ ե՞րբ պիտի ըլլան աս
բաները . և քու գալստեանդ՝ ու
աշխարհիս վերջին նշանը ի՞նչ պիտի
4 ըլլայ ։ Եւ Յիսուս պատասխան

Ցամ Տեառն 33

ժզ Գործ. Է. 51, 52 ։ Ա Թես. Բ. 15 ։
ժէ Ծն. ԺԵ. 16 ։ Ա Թես. Բ. 16 ։
ժը Գլ. Գ. 7 ։ ԺԲ. 34 ։
ժթ Գլ. ԻԱ. 34, 35 ։ Ղուկ. ԺԱ. 49 ։
ի Գործ. Ե. 40 ։ Է. 57, 58 ։ ԻԲ. 19 ։
իա Գլ. Ժ. 17 ։ Բ Կոր. ԺԱ. 24, 25 ։
իբ Յայտ. ԺԸ. 24 ։
իգ Ծն. Դ. 8 ։ Ա Յովհ. Գ. 12 ։
իդ Բ Մն. ԻԴ. 20, 21 ։
իե Ղուկ. ԺԳ. 34 ։
իզ Բ Մն. ԻԴ. 21 ։
իէ Բ Օր. ԼԲ. 11, 12 ։
իը Սաղ. ԺԷ. 8 ։ ՂԱ. 4 ։
իթ Սաղ. ՃԺԷ. 26 ։ Գլ. ԻԱ. 9 ։

ա Մար. ԺԳ. 1 ։ Ղուկ. ԻԱ. 5 ։
գ Գ Թագ. Թ. 7 ։ Երեմ. ԻԶ. 18 ։ Միք. Գ. 12 ։ Ղուկ. ԺԹ. 44 ։
դ Մար. ԺԳ. 3 ։
ե Ա Թես. Ե. 1 ։

Յամի Տեառն 33

ա Եփե. ե. 6 ։ Կող. բ. 8. 18 ։ բ Թես. բ. 3 ։ ա Յով. դ. 1 ։ գ Երեմ. ժդ. 14 ։ իդ. 21. 25 ։ Հմր 24 ։ Յով. ե. 43 ։ ե Հմր 11 ։ ը բ Մն. ժե. 6 ։ Ես. ժթ. 2 ։ Անգ. բ. 22 ։ Զաք. ժդ. 13 ։ թ Գղ. ժ. 17 ։ Մար. ժգ. 9 ։ Ղու. իա. 12 ։ Յով. ժե. 20 ։ ժզ. 2 ։ Գոր. դ. 2. 3 ։ է. 58 ։ ժբ. 1 ։ ա Պետ. դ. 16 ։ Յայտ. բ. 10. 13 ։ ժ Գղ. ժա. 6 ։ ժգ. 57 ։ բ Տիմ. ա. 15 ։ դ. 10. 16 ։ ի Գղ. է. 15 ։ Գոր. ի. 29 ։ բ Պետ. բ. 1 ։ լ ա Տիմ. դ. 1 ։ Հմր 5. 24 ։ ի Գղ. ժ. 22 ։ Մար. ժգ. 13 ։ Եբր. գ. 6. 14 ։ Յայտ. բ. 10 ։ ծ Գղ. դ. 23 ։ թ. 35 ։ կ Հռով. ժ. 18 ։ Կող. ա. 6. 23 ։ հ Մար. ժգ. 14 ։ Ղու. իա. 20 ։ ձ Դան. թ. 27. ժբ. 11 ։ ղ Դան. թ. 23. 25 ։ ճ Ղու. իգ. 29 ։ մ Դան. թ. 26. ժբ. 1 ։ Յովել. բ. 2 ։ յ Ես. կե. 8. 9 ։ Զաք. ժգ. 2. 3 ։ ն Մար. ժգ. 21 ։ Ղու. ժէ. 23 ։ իա. 8 ։ շ բ Օր. ժգ. 1 ։ Հմր 5. 11 ։ բ Թես. բ. 9. 10. 11 ։ Յայտ. ժգ. 13 ։

տուաւ՝ ու բսաւ անոնց . ա Զգոյշ
կեցէք՝ չըլլայ որ մէկը ձեզ խաբէ .
5 Ինչու որ բ շատերը պիտի գան իմ
անունովս՝ ու ըսեն թէ , Ես եմ
Քրիստոսը . ու ա շատերը պիտի մո-
6 լորցընեն ։ Եւ պիտի լսէք պատե-
րազմներ՝ ու պատերազմներու լու-
րեր . զգոյշ կեցէք որ չխռովիք .
ինչու որ ան ամէն բաները պէտք է
որ ըլլան , բայց դեռ վերջը չէ ։
7 Վասն զի ե ազգ ազգի վրայ պիտի
ելլէ , ու թագաւորութիւն թագա-
ւորութեան վրայ , և տեղ տեղ
սովեր ու մահտարաժամներ , և երկ-
րաշարժութիւններ պիտի ըլլան ։
8 Բայց ասոնք ամէնը՝ ցաւերուն ըս-
9 կիզբն են ։ թ Ան ատենը ձեզ նեղու-
թեան պիտի մատնեն , և ձեզ պի-
տի սպաննեն , ու իմ անուանս հա-
մար ամէն ազգերուն ատելի պիտի
10 ըլլաք ։ Եւ ան ատենը շատերը
ժ պիտի գայթակղին , ու մէկզմէկ
պիտի մատնեն , և մէկզմէկ պիտի
11 ատեն ։ Եւ ի շատ սուտ մարգարէ-
ներ պիտի ելլեն , ու լ շատերը պիտի
12 մոլորցընեն ։ Եւ անօրէնութիւնը
շատնալուն համար՝ շատերուն սէրը
13 պիտի պաղի ։ ի Բայց ով որ մինչև
վերջը համբերէ , անիկայ պիտի
14 ապրի ։ Եւ ծ արքայութեան աս ա-
ւետարանը կ բովանդակ աշխարհի
մէջ պիտի քարոզուի՝ բոլոր ազգե-
րուն վկայութիւն ըլլալու , և անկէ
ետև վերջը պիտի գայ ։
15 հ Ուստի երբոր տեսնէք աւերման-
քին պղծութիւնը՝ որ ձ Դանիէլ
մարգարէին ձեռքովը ըսուած է ,
թէ սուրբ տեղը կը կենայ . (ո՛վ որ
16 կարդայ՝ թող հասկընայ .) Ան ա-
տենը ղ Հրէաստանի մէջ եղողները՝
17 լեռները թող փախչին . Եւ ան
որ տանիքին վրայ է՝ թող չիջնէ
18 իր տունէն բան մը առնելու . Եւ
ան որ արտին մէջն է՝ թող ետ չը-
դառնայ իր հանդերձները առնե-
19 լու ։ Բայց ճ վայ ան օրերը յղի ե-
ղողներուն ու ծիծ տուողներուն ։
20 Եւ աղօթք ըրէք՝ որ ձեր փախչիլը
ձմեռը չըլլայ , ոչ ալ շաբաթ օրը .
21 Քանզի մ ան ատենը անանկ մեծ
նեղութիւն պիտի ըլլայ . որուն
նմանը աշխարհի սկիզբէն մինչև
հիմա եղած չէ , ոչ ալ պիտի
22 ըլլայ ։ Եւ թէ որ ան օրերը չքիչ-
նային , ընաւ մէկ մարմին մը պի-
տի չապրէր . յ բայց ընտրեալներուն
համար՝ ան օրերը պիտի քիչնան ։
23 ն Ան ատենը թէ որ մէկը ձեզի
ըսէ թէ , Ահա՛ հոս է Քրիստոսը՝
24 կամ հոն , մի՛ հաւատաք . Ինչու
որ շ սուտ քրիստոսներ և սուտ
մարգարէներ պիտի ելլեն , ու մեծ
նշաններ և հրաշքներ պիտի ցուցը-
նեն , որ ո եթէ կարելի էր՝ ընտ-
25 րեալներն ալ մոլորցընեն ։ Ահա՛
26 ձեզի առաջուց ըսի ։ Ուստի թէ
որ ձեզի ըսեն թէ՝ Ահա՛ անապատին
մէջն է , մի՛ ելլէք . և թէ՝ Ահա՛
ներքին սենեակներուն մէջն է , մի՛
27 հաւատաք ։ չ Վասն զի ինչպէս որ
փայլակը արևելքէն կ'ելլէ՝ ու մին-
չև արևմուտք կ'երևնայ , անանկ
պիտի ըլլայ Որդւոյ մարդոյ գա-
28 լուստը ։ պ Քանզի ուր որ մեռած
մարմին կայ , հոն պիտի ժողվուին
արծիւները ։
29 Եւ ջ շուտ մը ան նեղութեան օ-
րերէն ետև՝ ռ արեգակը պիտի խա-
ւարի , ու լուսինը իր լոյսը պիտի
չտայ , և աստղերը երկինքէն պիտի
իյնան , ու երկնից զօրութիւնները
30 պիտի շարժին ։ ս Եւ ան ատենը
Որդւոյ մարդոյ նշանը պիտի երևնայ
երկինքի մէջ , կ ու ան ատենը երկ-
րիս բոլոր ազգերը կոծ պիտի ընեն ,
տ ու պիտի տեսնեն Որդին մարդոյ
երկինքի ամպերուն վրայ եկած՝
զօրութիւնով ու մեծ փառքով ։
31 ր Եւ անիկայ իր հրեշտակները պի-
տի խրկէ մեծաձայն փողով , ու
պիտի ժողվեն իր ընտրեալները չորս
հովերէն՝ երկինքին մէկ ծայրէն
մինչև մէկալ ծայրը ։
32 ց Թզենիէն առակ մը սորվեցէք .
որ երբ անոր ոստերը կը կակուղ-
նան , ու տերևները կը ցցուին ,
33 գիտէք թէ ամառը մօտ է ։ Նոյն-
պէս ալ դուք երբոր աս ամէն բա-
ները տեսնէք , գիտցէք ւ որ մօտ է
34 դռներուն քովը ։ Ճշմարիտ կ'ը-
սեմ ձեզի , որ փ աս ազգը պիտի
չանցնի , մինչև որ աս ամէն բա-
35 ները ըլլան ։ ք Երկինքը ու երկիրը
պիտի անցնին , բայց իմ խօսքերս
ընաւ պիտի չանցնին ։
36 օ Իսկ ան օրուան և ան ժամուն
համար՝ մէկը չգիտեր , ոչ ալ երկ-
նից ՚ հրեշտակները , ֆ հապա միայն
37 իմ Հայրս ։ Բայց ինչպէս որ Նոյի
օրերը էին , Որդւոյ մարդոյ գա-
լուստն ալ այնպէս պիտի ըլլայ ։
38 ա Քանզի ինչպէս էին ան օրերը
ջրհեղեղէն առաջ , կ'ուտէին՝ կը
խմէին՝ կնիկ կ'առնէին ու էրկան
կու տային , մինչև ան օրը՝ որ Նոյ
39 տապանը մտաւ . Եւ չգիտցան՝
մինչև որ ջրհեղեղը եկաւ , ու ամէ-
նը վերցուց . Որդւոյ մարդոյ գա-
լուստն ալ այնպէս պիտի ըլլայ ։
40 բ Ան ատենը երկու հոգի
արտի մը մէջ ըլլան , մէկը պի-
տի առնուի ու մէկալը ձգուի .
41 Եւ երկու կնիկ մէկ աղօ-
րիքի մէջ աղալու վրայ գտնուին ,
մէկը պիտի առնուի ու մէկալը
ձգուի ։

Յամի Տեառն 33

ո Յով. զ. 37 ։ ժ. 28. 29 ։ Հռով. ը. 28. 29. 30 ։ բ Տիմ. բ. 19 ։ չ Ղու. ժէ. 24 ։ պ Յոբ. լթ. 30 ։ Ղու. ժէ. 37 ։ ջ Դան. է. 11. 12 ։ ռ Ես. ժգ. 10 ։ Եզեկ. լբ. 7 ։ Յովել. բ. 10. 31 ։ գ. 15 ։ Ամով. ե. 20 ։ ը. 9 ։ Մար. ժգ. 24 ։ Ղու. իա. 25 ։ Գոր. բ. 20 ։ Յայտ. զ. 12 ։ ս Դան. է. 13 ։ կ Զաք. ժբ. 12 ։ տ Գղ. ժզ. 27 ։ Մար. ժգ. 26 ։ Յայտ. ա. 7 ։ ր Գղ. ժգ. 41 ։ ա Կոր. ժե. 52 ։ ա Թես. դ. 15 ։ ց Ղու. իա. 29 ։ ւ Յակ. ե. 9 ։ փ Գղ. ժզ. 28 ։ իգ. 36 ։ Մար. ժգ. 30 ։ Ղու. իա. 32 ։ ք Սաղ. ճբ. 26 ։ Ես. ծա. 6 ։ Երեմ. լա. 35. 36 ։ Գղ. ե. 18 ։ Մար. ժգ. 31 ։ Ղու. իա. 33 ։ Եբր. ա. 11 ։ օ Մար. ժգ. 32 ։ Գոր. ա. 7 ։ ա Թես. ե. 2 ։ բ Պետ. գ. 10 ։ ՚ Ոմանք յաւելուն. որ և ոչ Որդին ։ ֆ Զաք. ժդ. 7 ։ ա Ծն. զ. 3. 4. 5 ։ է. 5 ։ Ղու. ժէ. 26 ։ ա Պետ. գ. 20 ։ բ Ղու. ժէ. 34 ։ Ը։ ։

42 Ուրեմն արթուն կեցէք . ինչու
որ չէք գիտեր թէ որ ժամուն ձեր
43 Տէրը կու գայ ։ Բայց ասիկա գիտ-
ցէք . որ եթէ տանուտէրը գիտնար՝
թէ գիշերուան որ պահուն գողը
կու գայ , արթուն կը կենար . և
թող չէր տար որ իր տունը ծա-
44 կեն ։ Անոր համար դուք ալ
պատրաստ կեցէք . քանզի Որ-
դին մարդոյ կու գայ անանկ ժա-
մու մէջ՝ որ դուք չէք կարծեր ։
45 Ուստի ո՞վ է այն հաւատարիմ ու
իմաստուն ծառան՝ որն որ իր տէ-
րը իր ծառաներուն վրայ դրաւ . որ
ատենին անոնց կերակուր տայ ։
46 Երանի է այն ծառային . որն որ իր
տէրը եկած ատենը՝ անանկ ըրած
47 պիտի գտնէ ։ Ճշմարիտ կ'ըսեմ
ձեզի , որ իր բոլոր ունեցածին
վրայ պիտի կեցընէ զանիկայ ։
48 Հապա թէ որ այն չար ծառան իր
սրտին մէջը ըսէ . իմ տէրս իր գա-
49 լը կ'ուշացընէ . Եւ սկսի իր ծա-
ռայակիցները ծեծել , ու գինով-
50 ներուն հետ ուտել ու խմել . Այն
ծառային տէրը պիտի գայ անանկ
մէկ օր մը որ չսպասեր , և անանկ
51 մէկ ժամ մը՝ որ չգիտեր . Եւ զա-
նիկայ մէջտեղէն պիտի կտրէ , ու
անոր բաժինը կեղծաւորներուն
հետ պիտի դնէ . Հոն պիտի ըլլայ
լալ՝ ու ակռաներ կճռցընել ։

## ԳԼ. ԻԵ

1 Տասը կուսանաց առակը . 14 ու տաղանդներուն առակը ։ 31 Վերջին դատաստանին ըստորագրութիւնը ։

1 Այն ատենը երկնից թագաւորու-
թիւնը պիտի նմանի տասը կոյ-
սերու , որոնք իրենց լապտերները
առնելով՝ փեսան դիմաւորելու
2 ելան ։ Անոնցմէ հինգը իմաստուն
3 էին , և հինգը յիմար , Որ յիմար-
ները առին իրենց լապտերները , ու
4 հետերնին եղ չառին . Բայց իմաս-
տունները իրենց լապտերներուն
հետ ամաններով եղ ալ առին ։
5 Եւ փեսան որ ուշացաւ , ամէնն
6 ալ թմրեցան ու քնացան ։ Եւ կէս
գիշերին ձայն մը եղաւ . Ահա փե-
սան կու գայ՝ զանիկայ դիմաւորելու
7 ելէք ։ Այն ատենը բոլոր կոյսերը
ելան , ու իրենց լապտերները շիտ-
8 կեցին ։ Եւ յիմարները ըսին ի-
մաստուններուն . տուէք մեզի ձեր
եղէն . ինչու որ մեր լապտերները
9 մարելու վրայ են ։ Պատասխան
տուին իմաստունները՝ ու ըսին .
Չըլլայ որ մեզի ու ձեզի չբաւակա-
նանայ . այլ յաւէտ ծախողներուն
գացէք և գնեցէք ձեզի համար ։
10 Երբոր անոնք գացին գնելու փեսան
եկաւ ու պատրաստ եղողները ա-
նոր հետ հարսնիքը մտան , և դուռ-
11 ը գոցուեցաւ ։ Ետքը մէկալ
կոյսերը եկան՝ ու ըսին . Տէր Տէր՝
12 բաց մեզի ։ Բայց անիկայ պա-
տասխան տուաւ՝ ու ըսաւ . Ճըշ-
մարիտ կ'ըսեմ ձեզի թէ՝ Ես ձեզ
13 չեմ ճանչնար ։ Ուրեմն արթուն
կեցէք . ինչու որ ոչ օրը գիտէք ,
և ոչ *ժամը ։
14 Քանզի ինչպէս օտար երկիր
գացող մարդ մը՝ կանչեց իր ծառա-
ները , և իր ունեցածը անոնց
15 յանձնեց ։ Մէկուն տուաւ հինգ
տաղանդ , ու մէկուն՝ երկուք , և
մէկուն՝ մէկ , ամէն մէկուն իր կա-
րողութեանը չափ . ու անմիջապէս
16 ճամբայ ելաւ ։ Եւ այն որ հինգ
տաղանդը առած էր , գնաց անոնց-
մով գործ տեսաւ . և ուրիշ հինգ
17 տաղանդ շահեցաւ ։ Նմանապէս
այն որ երկուքը առած էր , ուրիշ
18 երկուք ալ շահեցաւ ։ Իսկ այն որ
մէկը առած էր . գնաց գետինը փո-
րեց , ու իր տիրոջը ստակը պա-
19 հեց ։ Շատ ժամանակէ ետև այն
ծառաներուն տէրը եկաւ , և ա-
20 նոնցմէ հաշիւ ուզեց ։ Եւ հինգ
տաղանդը առնողը եկաւ՝ ուրիշ
հինգ տաղանդ ալ բերաւ , ու ը-
սաւ . Տէ՛ր՝ հինգ տաղանդ յանձ-
նեցիր ինծի , ահա ուրիշ հինգ
տաղանդ ալ անոնց վրայ շահեցայ ։
21 Ըսաւ անոր իր Տէրը . Ապրի՛ս
բարի հաւատարիմ ծառայ ,
դուն որ քիչ բանին մէջ հաւատա-
րիմ եղար . քեզ շատ բաներու
վրայ պիտի կեցընեմ . մտիր քու
22 տիրոջդ ուրախութեանը մէջ ։ Եր-
կու տաղանդը առնողն ալ եկաւ՝ ու
ըսաւ . Տէր՝ երկու տաղանդ յանձ-
նեցիր ինծի , ահա ուրիշ երկու
տաղանդ ալ անոնց վրայ շահեցայ ։
23 Ըսաւ անոր իր տէրը . Ապրի՛ս
բարի ու հաւատարիմ ծառայ ,
դուն որ քիչ բանին մէջ հաւատա-
րիմ եղար , քեզ շատ բաներու վը-
րայ պիտի կեցընեմ . մտիր քու
24 տիրոջդ ուրախութեանը մէջ ։ Մէկ
տաղանդը առնողն ալ եկաւ՝ ու ը-
սաւ . Տէ՛ր՝ գիտէի որ դուն խիստ
մարդ մըն ես . չսերմանած տեղէդ
կը հնձես , ու չցանած տեղէդ կը
25 ժողվես . Ուստի վախնալով . գա-
ցի քու տաղանդդ գետնին տակը
պահեցի . առ ահա քուկդ քեզի ։
26 Պատասխան տուաւ անոր տէրը՝ ու
ըսաւ անոր . Չար և ծոյլ ծառայ՝
գիտէիր որ չսերմանած տեղէս կը
հնձեմ , ու չցանած տեղէս կը ժող-
27 վեմ , Ուրեմն պէտք էր քեզի որ
իմ ստակս սեղանաւորներուն տա-
յիր . որ ես եկած ատենս շահովը
28 առնէի իմս ։ Արդ՝ առէք ատկէ
տաղանդը , ու տասը տաղանդ ու-

Ցամի Տեառն 33
ա Գլ. ԻԵ. 13 ։ Մար. ԺԳ. 33. ԼԵ ։ Ղու. ԻԱ. 36 ։
բ Ղու. ԺԲ. 39 ։ Ա Թես. Ե. 2 ։ Բ Պետ. Գ. 10 ։ Յայտ. Գ. 3 ։ ԺԶ. 15 ։
գ Գլ. ԻԵ. 13 ։ Ա Թես. Ե. 6 ։
դ Ղու. ԺԲ. 42 ։ Գոր. Ի. 28 ։ Ա Կոր. Դ. 2 ։ Եբր. Գ. 5 ։
ե Յայտ. ԺԶ. 15 ։
զ Գլ. ԻԵ. 21. 23 ։ Ղու. ԻԲ. 29 ։
ը Գլ. Ը. 12 ։ ԻԵ. 30 ։
ա Եփե. Ե. 29 , 30 ։ Յայտ. ԺԹ. 7 ։ ԻԱ. 2 , 9 ։
բ Գլ. ԺԳ. 47 ։ ԻԲ. 10 ։
գ Ա Թես. Ե. 6 ։
դ Գլ. ԻԴ. 31 ։ Ա Թես. Դ. 16 ։
ե Ղու. ԺԲ. 35 ։
զ Ղու. ԺԳ. 25 ։

Ցամի Տեառն 33
ա Գլ. Է. 21 , 22 , 23 ։
բ Սաղ. Ե. 5 ։ Ամբ. Ա. 13 ։ Յով. Թ. 31 ։
գ Գլ. ԻԴ. 42 , 44 ։ Մար. ԺԳ. 33 , 35 ։ Ղու. ԻԱ. 36 ։ Ա Կոր. ԺԶ. 13 ։ Ա Թես. Ե. 6 ։ Ա Պետ. Ե. 8 ։ Յայտ. ԺԶ. 15 ։
* Որ ժամը , որուն մէջ Որդին Մարդոյ կու գայ ։
դ Ղու. ԺԹ. 12 ։ Գլ. ԻԱ. 33 ։
ե Հռով. ԺԲ. 6 ։ Ա Կոր. ԺԲ. 7 , 11 , 29 ։ Եփե. Դ. 11 ։
զ Գլ. ԻԴ. 47 ։ Հմր 34 , 46 ։ Ղու. ԺԲ. 44 ։ ԻԲ. 29 30 ։
է Եբր. ԺԲ. 2 ։ Բ Տիմ. Բ. 12 ։ Ա Պետ. Ա. 8 ։
ը Հմր 21 ։

Յամի Տեառն 33

ւ Գլ. ժգ. 12 ։ Մար. դ. 25 ։ Ղու. ը. 18 ։ ժթ. 26 ։ Յօհ. ժե. 2 ։
շ Գլ. ը. 12 ։ իբ. 51 ։
ն Զաք. ժդ. 5 ։ Գլ. ժզ. 27 ։ ժթ. 28 ։ Մար. ը. 38 ։ Գոր. ա. 11 ։ ա Թես. դ. 15 ։ բ Թես. ա. 7 ։ Յուդ. 14 ։ Յայտ. ա. 7 ։
ո Որոնք չուէն սուրբ Բառը ։
չ Հռով. ժդ. 10 ։ բ Կոր. ե. 10 ։ Յայտ. ի. 12 ։
պ Եզեկ. ի. 38 ։ Լգ. 17 ։ 20 ։ Գլ. ժգ. 49 ։
ջ Գլ. ի. 23 ։ Մար. ժ. 40 ։ ա Կոր. բ. 9 ։ Եբր. ժա. 16 ։
ռ Հռով. ը. 17 ։ ա Պետ. ա. 4. 9 ։ գ. 9 ։ Յայտ. իա. 7 ։
ս Եսա. ծը. 7 ։ Եզեկ. ժը. 7 ։ Յակ. ա. 27 ։
վ Եբր. ժգ. 2 ։ գ Յօհ. 5 ։
տ Յակ. բ. 15. 16 ։
ր Տիմ. ա. 16 ։
ց Առակ. ժգ. 31 ։ ժթ. 17 ։ Գլ. ժ. 42 ։ Մար. թ. 40 ։ Եբր. զ. 10 ։
ւ Սաղ. զ. 8 ։ Գլ. է. 23 ։ Ղու. ժգ. 27 ։
փ Գլ. ժգ. 40. 42 ։
ք բ Պետ. բ. 4 ։ Յուդ. 6 ։

29 նեցողին տուէք ։ ւ Ինչու որ ամէն
ունեցողին պիտի տրուի , ու պիտի
աւելնայ . և չունեցողին ունեցածն
30 ալ անկէ պիտի առնուի ։ Եւ աս
անպիտան ծառան շդուրսի խաւա-
րը հանեցէք . հոն պիտի ըլլայ լալ՝
ու ակռաներ կրճտցընել ։
31 Ու ներբոր Որդին մարդոյ իր փառ-
քովը գայ , և բոլոր ոսուրբ հրեշ-
տակները իր հետը , ան ատենը իր
32 փառաց աթոռը պիտի նստի . Եւ
Նանոր առջևը պիտի ժողվուին բոլոր
ազգերը , ու չզանոնք իրարմէ պի-
տի զատէ , ինչպէս որ հովիւ մը
ոչխարները այծերէն կը զատէ ,
33 Եւ ոչխարները իր աջ կողմը պի-
տի կայնեցընէ , ու այծերը՝ ձախ
կողմը ։
34 Ան ատենը Թագաւորը իր աջ
կողմի եղողներուն պիտի ըսէ . Եկէք
իմ Հօրս օրհնածները , պաշխարհի
սկիզբէն ձեզի համար պատրաս-
տուած թագաւորութիւնը չժա-
35 ռանգեցէք . ՆԻնչու որ անօթեցայ ,
և ինծի ուտելիք տուիք . ծարա-
ւեցայ , ու ինծի խմցուցիք . Կօտա-
րական էի , և զիս ներս առիք .
36 ռՄերկ էի , և զիս հագուեցուցիք .
հիւանդ էի , ու ինծի տես եկաք .
Նբանտի մէջ էի , և ինծի եկաք ։
37 Ան ատենը արդարները անոր պա-
տասխան պիտի տան՝ ու ըսեն . Տէ՛ր
ե՞րբ քեզ անօթեցած տեսանք՝ ու
կերակրեցինք , կամ ծարաւած՝ ու
38 խմցուցինք . Ե՞րբ քեզ օտարա-
կան տեսանք՝ և ներս առինք , կամ
39 մերկ՝ ու հագուեցուցինք . Ե՞րբ
քեզ հիւանդ՝ կամ բանտի մէջ տե-
40 սանք , ու քեզի եկանք ։ Եւ Թա-
գաւորը պատասխան տալով՝ պիտի
ըսէ անոնց . Ճշմարիտ կ՚ըսեմ ձե-
զի . ցՈրովհետև աս իմ եղբայրնե-
րուս պզտիկներէն մէկուն
ըրիք , ինծի ըրիք ։
41 Ան ատենը ձախ կողմը եղողնե-
րուն ալ պիտի ըսէ . ՀՄէկդի գա-
ցէք ինծմէ անիծեալներ՝ փյաւիտե-
նական կրակին մէջը , որ պատ-
րաստուած է քՍատանային՝ ու իր
42 հրեշտակներուն ։ Ինչու որ անօ-
թեցայ , և ինծի ուտելիք չտուիք .
ծարաւեցայ , ու ինծի չխմցուցիք .
43 Օտարական էի , և զիս ներս չա-
ռիք . մերկ էի , և զիս չհագուե-
ցուցիք . հիւանդ ու բանտի մէջ
44 էի , և ինծի տես չեկաք ։ Ան ա-
տենը անոնք ալ պատասխան պիտի
տան՝ ու ըսեն . Տէ՛ր ե՞րբ տեսանք
քեզ անօթեցած կամ ծարաւած՝ կամ
օտարական՝ կամ մերկ՝ կամ հիւանդ՝
կամ բանտի մէջ , ու քեզի սպա-
45 սաւորութիւն չըրինք ։ Ան ատե-
նը պատասխան պիտի տայ անոնց՝
ու ըսէ . Ճշմարիտ կ՚ըսեմ ձեզի .
ՀՈրովհետև ասոնց պզտիկ-
ներէն մէկուն չըրիք , ինծի ալ
չըրիք ։
46 փԵւ ասոնք պիտի երթան յաւի-
տենական տանջանքը , իսկ արդար-
ները՝ յաւիտենական կեանքը ։

## ԳԼ. ԻԶ

1 Իշխանները խորհուրդ կ՚ընեն Քրիստոսի դէմ ։ 6 Կնիկ մը եղով կ՚օծէ անոր գլուխը ։ 14 Յուդա կը մատնէ զՔրիստոս ։ 17 Քրիստոս կ՚ուտէ զատիկը . 26 կը սահմանէ իր սուրբ ընթրիքը . 36 աղօթք կ՚ընէ պարտէզին մէջ . 47 և մէկ համբուրով մը մատնուած՝ 57 Կայիափայի առջին կը տարուի ։ 69 Պետրոս կ՚ուրանայ զՔրիստոս ։

1 Ու երբոր Յիսուս լմնցուց աս բո-
լոր խօսքերը , ըսաւ իր աշա-
2 կերտներուն . ռԳիտէք որ՝ երկու
օրէն ետև զատիկ կ՚ըլլայ , և Որդին
մարդոյ կը մատնուի խաչը ելլելու ։
3 բԱն ատենը քահանայապետները՝
ու դպիրները՝ և ժողովուրդին ծե-
րերը ժողվուեցան քահանայապե-
տին սրահը , որուն անունը Կայիա-
4 փա էր . Ու խորհուրդ ըրին՝ որ
նենգութեամբ բռնեն Յիսուսը՝ ու
5 մեռցընեն ։ Բայց կ՚ըսէին թէ ,
Ոչ տօնիս մէջ , որ ժողովուր-
դին մէջ խռովութիւն չըլլայ ։
6 գՈւ երբոր Յիսուս դԲեթանիա
7 էր բորոտ Սիմոնին տունը , Կնիկ մը
եկաւ անոր՝ որ ունէր ծանրագին ե-
ղի շիշ մը . և թափեց անոր գլը-
խուն վրայ՝ երբոր անիկայ սեղան
8 նստած էր ։ եԵւ անոր աշակերտ-
ները տեսնելով , դժուարեցան՝ ու
ըսին . Ինչո՞ւ աս կորուստը ըլլայ .
9 Քանզի աս եղը կրնար սուղ գնով
ծախուիլ , ու աղքատներուն տը-
10 րուիլ ։ Եւ Յիսուս իմանալով
ըսաւ անոնց . Ինչո՞ւ անհանգիստ
կ՚ընէք կնիկը . քանզի աղէկ բա-
11 րի գործ մը գործեց ինծի ։ զԻնչու
որ աղքատները ամէն ատեն ձեր հե-
տը ունիք , բայց էզիս ամէն ատեն
12 չունիք ։ Վասն զի անիկայ՝ որ աս
եղը իմ մարմնիս վրայ թափեց , իմ
13 թաղմանս համար ըրաւ ։ Ճշմա-
րիտ կ՚ըսեմ ձեզի թէ , բոլոր աշ-
խարհի մէջ՝ ուր որ աս աւետարանս
քարոզուի , ատոր ըրածն ալ պիտի
խօսուի իրեն յիշատակ ըլլալու հա-
մար ։
14 ըԱն ատենը տասուերկուքէն մէ-
կը՝ որ թՅուդա Իսկարիովտացի կ՚ը-
սուէր , գնաց քահանայապետնե-
15 րուն՝ ու ըսաւ . ժԻ՞նչ կ՚ուզէք ին-
ծի տալ , ու ես ձեզի մատնեմ զա-
նիկայ . և անոնք երեսուն ժէկ ար-
16 ծաթ իկշռեցին անոր ։ Եւ անկէ
ետև պատեհութիւն մը կը փընտ-
ռէր , որ զանիկայ մատնէ անոնց ։
17 ԽԵւ բաղարջակերաց առջի օրը ա-

Յամի Տեառն 33

ւԱռակ. ժգ. 31 ։ ժէ. 5 ։ Զաք. բ. 8 ։ Գործ. թ. 5 ։
փ Դան. ժբ. 2 ։ Յօհ. ե. 29 ։ Հռով. բ. 7, Էջ ։

ա Մար. ժդ. 1 ։ Ղու. իբ. 1 ։ Յօհ. ժգ. 1 ։
բ Սաղ. բ. 2 ։ Յօհ. ժա. 47 ։ Գործ. դ. 25, Էջ ։

գ Մար. ժդ. 3 ։ Յօհ. ժա. 1, 2 ։ ժբ. 3 ։
դ Գլ. իա. 17 ։
ե Յօհ. ժբ. 4 ։

զ Բ Օր. ժե. 11 ։ Յօհ. ժբ. 8 ։
է Տես Գլ. ժը. 20 ։ իը. 20 ։ Յօհ. ժգ. 33 ։ ժդ. 19 ։ ժզ. 5, 28 ։ ժէ. 11 ։
ը Մար. ժդ. 10 ։ Ղու. իբ. 3 ։ Յօհ. ժգ. 2, 30 ։
թ Գլ. ժ. 4 ։
ժ Զաք. ժա. 12 ։ Գլ. իէ. 3 ։
ի Կամ խոստացան
ի Ել. ժբ. 6, 18 ։ Մար. ժդ. 12 ։ Ղու. իբ. 7 ։

Յամի Տեառն 33

շակերտները Յիսուսին եկան ու ա-
նոր ըսին . Ո՞ւր կ'ուզես որ քեզի
պատրաստենք՝ զատիկը ուտելու
18 համար ։ Եւ անիկայ ըսաւ . Գացէք
քաղաքը այս ինչ մարդուն՝ ու ըսէք
անոր . Վարդապետը կ'ըսէ . Ժա-
մանակս մօտ է , աշակերտներուս
հետ մէկտեղ քու քովդ պիտի ը-
19 նեմ զատիկը ։ Աշակերտներն ալ
ըրին՝ ինչպէս որ Յիսուս իրենց հը-
րաման ըրաւ , ու պատրաստեցին
զատիկը ։
20 Ու երբոր իրիկուն եղաւ , տաս-
ներկուքին հետ սեղան նստաւ ։
21 Եւ քանի որ կ'ուտէին՝ ըսաւ .
Ճշմարիտ կ'ըսեմ ձեզի , որ ձեզմէ
22 մէկը զիս պիտի մատնէ ։ Ու շատ
տրտմեցան , և անոնցմէ ամէն մէկը
սկսաւ ըսել անոր . Տէ՛ր՝ միթէ ե՞ս
23 եմ ։ Անիկայ պատասխան տուաւ՝
ու ըսաւ . Ան որ իմ հետս իր
ձեռքը պնակը թաթխեց , նոյնը պիտի
24 մատնէ զիս ։ Յիրաւի Որդին մար-
դոյ կ'երթայ՝ ինչպէս որ գրուած է
իրեն համար . բայց վա՜յ ան մար-
դուն՝ որուն ձեռքովը Որդին մար-
դոյ կը մատնուի . աղէկ էր ան մար-
25 դուն , որ ծնած չըլլար ։ Պատաս-
խան տուաւ Յուդան՝ որ անիկայ
պիտի մատնէր՝ ու ըսաւ . Վարդա-
պե՛տ միթէ ե՞ս եմ . ըսաւ անոր .
Դուն ըսիր ։
26 Եւ քանի որ անոնք կ'ուտէին ,
Յիսուս հաց առաւ՝ օրհնեց ու կըտ-
րեց , և տուաւ աշակերտներուն ու
ըսաւ . Առէ՛ք կերէք , աս է իմ
27 մարմինս ։ Եւ գաւաթը առաւ՝
գոհացաւ , ու տուաւ անոնց՝ և ը-
սաւ . Ամէնքդ ալ խմեցէք ասկէ .
28 ինչու որ ասիկայ է իմ արիւնս
նոր ուխտի , որ շատերու համար
կը թափուի մեղաց թողութեան
29 համար ։ Բայց կ'ըսեմ ձեզի .
Ասկէ ետև որթին բերքէն բնաւ
պիտի չխմեմ մինչև ան օրը՝ երբոր
ձեր հետը անիկայ նոր խմեմ իմ
Հօրս թագաւորութեանը մէջ ։
30 Եւ օրհնութիւն մը երգելէն ետև
31 Ձիթենեաց լեռը ելան ։ Ան ատե-
նը Յիսուս ըսաւ անոնց . Դուք
ամէնքդ աս գիշեր իմ վրայովս
պիտի գայթակղիք . ինչու որ գը-
րուած է թէ՝ Հովիւը պիտի զար-
նեմ , ու հօտին ոչխարները պիտի
32 ցրուին ։ Բայց յարութիւն առնելէս
ետև՝ ձեզմէ առաջ Գալիլեա պի-
33 տի երթամ ։ Պատասխան տուաւ
Պետրոս՝ ու ըսաւ անոր . Թէպէտ
ամէնքն ալ քու վրայովդ գայթակ-
ղին , բայց ես բնաւ պիտի չգայ-
34 թակղիմ ։ Ըսաւ անոր Յիսուս .
Ճշմարիտ կ'ըսեմ քեզի ։ Աս
գիշեր դեռ հաւը չխօսած իրեք

Մար. ժդ. 17—21 ։ Ղու. իբ. 14 ։ Յով. ժգ. 21 ։
Սաղ. խա. 9 ։ Ղու. իբ. 21 ։ Յով. ժգ. 18 ։
Սաղ. իբ ։ Ես. ծգ ։ Դան. թ. 26 ։ Մար. թ. 11 ։ Ղու. իդ. 25, 26, 46 ։ Գոր. ժէ. 2, 3 ։ իզ. 22, 23 ։ ա Կոր. ժե. 3 ։
Յով. ժե. 12 ։
Մար. ժդ. 22 ։ Ղու. իբ. 19 ։
ա Կոր. ժա. 23, 24, 25 ։
ա Կոր. ժ. 16 ։
Մար. ժդ. 23 ։
Տե՛ս Եբ. իգ. 8 ։ Ղև. ժէ. 11 ։
Երեմ. լա. 31 ։
Գւ. ի. 28 ։ Հռով. ե. 15 ։ Եբր. թ. 22 ։
Մար. ժդ. 25 ։ Ղու. իբ. 18 ։
Գոր. ա. 41 ։
Մար. ժդ. 26 ։
Մար. ժդ. 27 ։ Յով. ժզ. 32 ։
Զաք. ժգ. 7 ։
Գւ. իը. 7, 10, 16 ։ Մար. ժզ. 7 ։
Մար. ժդ. 30 ։ Ղու. իբ. 34 ։ Յով. ժգ. 38 ։

35 անգամ զիս պիտի ուրանաս ։ Ըսաւ
անոր Պետրոս . Թէև քեզի հետ
մեռնելու ալ ըլլամ՝ բնաւ քեզ
պիտի չուրանամ . ասանկ կ'ըսէին
նաև ամէն աշակերտները ։
36 Ան ատենը Յիսուս անոնց հետ
տեղ մը եկաւ , որուն անունը
Գեթսեմանի էր , ու ըսաւ աշա-
կերտներուն . Հոս նստեցէք՝ մինչև
որ ես երթամ հոն աղօթք ընեմ ։
37 Եւ իր հետը առնելով Պետրոսը
ու Զեբեդէոսին երկու որդիքը ,
38 սկսաւ տրտմիլ և վշտանալ ։ Ան
ատենը ըսաւ անոնց . Իմ անձս
մեռնելու չափ տրտում է . հո՛ս կե-
ցէք , և ինծի հետ արթուն մնա-
39 ցէք ։ Ու քիչ մը առաջ երթա-
լով՝ իր երեսին վրայ ինկաւ , և ա-
ղօթք ըրաւ՝ ըսելով . Ո՛վ Հայր
իմ՝ թէ որ կարելի է , թող աս
գաւաթը ինծմէ անցնի . բայց չէ՛
թէ ինչպէս որ ես կ'ուզեմ , հապա
40 ինչպէս որ դուն կ'ուզես ։ Եւ
եկաւ աշակերտներուն՝ ու զանոնք
քնացած գտաւ , և ըսաւ Պետրո-
սին . Այդպէս մէկ ժամ մըն ալ
չկրցա՞ք ինծի հետ արթուն կենալ ։
41 Արթո՛ւն կեցէք՝ և աղօթք ըրէք ,
որ փորձութեան մէջ չմտնէք . հո-
գին յօժար է , բայց մարմինը տը-
42 կար ։ Դարձեալ երկրորդ անգամ
գնաց աղօթք ըրաւ՝ ըսելով . Ո՛վ
Հայր իմ՝ եթէ անկարելի է որ աս
գաւաթը ինծմէ անցնի՝ առանց ան-
կէ խմելուս , թող քու կամքդ
43 ըլլայ ։ Եւ եկաւ զանոնք նորէն
քնացած գտաւ . ինչու որ աչքեր-
44 նին ծանրացած էր ։ Եւ թողուց
անոնք , ու նորէն գնաց երրորդ ան-
գամ աղօթք ըրաւ՝ նոյն խօսքը ը-
45 սելով ։ Ան ատենը եկաւ իր ա-
շակերտներուն՝ ու ըսաւ անոնց .
Ասկէ ետև քնացէք՝ ու հանգչեցէք .
ահա՛ ժամը հասաւ , և Որդին մար-
դոյ մեղաւորներուն ձեռքը կը մատ-
46 նուի ։ Ելէք ասկէ երթանք , ա-
հա՛ մօտեցաւ անիկայ՝ որ զիս պիտի
մատնէ ։
47 Եւ դեռ անիկայ աս որ կը խօ-
սէր , ահա՛ Յուդան տասներկու-
քէն մէկը՝ եկաւ . և իր հետը շատ
բազմութիւն սուրերով ու բիրերով՝
քահանայապետներէն և ժողովուր-
48 դին ծերերէն ։ Եւ զանիկայ մատ-
նողը անոնց նշան մը տուեր էր՝
ըսելով . Ո՛վ որ ես համբուրեմ՝
49 ան է , բռնեցէք անիկայ ։ Եւ
շուտ մը Յիսուսին մօտենալով՝ ը-
սաւ . Ողջո՛յն քեզ՝ վարդապետ .
50 ու համբուրեց զանիկայ ։ Եւ Յի-
սուս ըսաւ անոր . Ընկե՛ր՝ ինչո՞ւ
համար եկար դուն . ան ատենը մօ-
տեցան՝ ձեռքը զարկին Յիսուսին ու

Յամի Տեառն 33

Մար. ժդ. 32—35 ։ Ղու. իբ. 39 ։ Յով. ժը. 1 ։
Գւ. դ. 21 ։
Յով. ժբ. 27 ։
Մար. ժդ. 36 ։ Ղու. իբ. 42 ։ Եբր. ե. 7 ։
Յով. ժբ. 27 ։
Գւ. ի. 22 ։
Յով. ե. 30 ։ զ. 38 ։ Փիլ. բ. 8 ։
Մար. ժդ. 33 ։ ժդ. 38 ։ Ղու. իբ. 40, 46 ։ Եփե. զ. 18 ։
Մար. ժդ. 43 ։ Ղու. իբ. 47 ։ Յով. ժը. 3 ։ Գոր. ա. 16 ։
բ Թագ. ի. 9 ։
Սաղ. խա. 9 ։ ծե. 13 ։

Յամի Տեառն 33

[տ] Յով. ժը. 10 ։
[ր] Ծն. թ. 6 ։ Յայտ. ժգ. 10 ։
[ց] Դ Թագ. զ. 17 ։ Դան. է. 10 ։
* Յուն. լեգէոնէն
[ւ] Ես. ծգ. 7, 8 ։ Հմր 24 ։ Ղու. իդ. 25, 44, 46 ։
[փ] Ողբ. դ. 20 ։ Հմր 54 ։
[ք] Տես Յով. ժը. 15 ։
[օ] Մար. ժդ. 53 ։ Ղու. իբ. 54 ։ Յով. ժը. 12, 13, 24 ։
[ա] Սաղ. իէ. 12 ։ լե. 11 ։ Մար. ժդ. 55 ։ Գործ զ. 13 ։
[բ] Օր. ժթ. 15 ։
[գ] Գլ. իէ. 40 ։ Յով. բ. 19 ։
[դ] Մար. ժդ. 60 ։
[ե] Ես. ծգ. 7 ։ Գլ. իէ. 12, 14 ։
[զ] Ղև. ե. 1 ։ Ա Թագ. ժդ. 24, 26 ։
[է] Դան. է. 13 ։ Գլ. ժզ. 27 ։ իդ. 30 ։ Ղու. իա. 27 ։ իե. 31 ։ Յով. ա. 51 ։ Հռով. ժդ. 10 ։ Ա Թես. դ. 16 ։ Յայտ. ա. 7 ։
[ը] Սաղ. ճժ. 1 ։ Գործ. է. 55 ։
[թ] Դ Թագ. ժը. 37 ։ ժթ. 1 ։

51 բռնեցին զանիկայ ։ Եւ ահա [տ]Յի-
սուսի հետ եղողներէն մէկը ձեռքը
երկընցուց, և իր սուրը հանելով՝
զարկաւ քահանայապետին ծառա-
յին, և անոր ականջը մէկդի հա-
52 նեց ։ Ան ատենը Յիսուս ըսաւ
անոր․ Սուրդ իր տեղը դարձուր․
ինչու որ [ր]ամէն սուր առնողները
53 սրով պիտի կորսուին ։ Կը կար-
ծե՞ս թէ չեմ կրնար հիմա իմ
Հօրս աղաչել, և ինծի հասցընէ
[ց]տասներկու *գունդէն աւելի հը-
54 րեշտակներ ։ Բայց ի՞նչպէս պիտի
կատարուին գիրքերը, [ւ]թէ պէտք
է ասանկ ըլլալ ։
55 Ան ատենը Յիսուս ըսաւ ան
բազմութեանը․ Իբր թէ աւազա-
կի՞ վրայ ելաք՝ սուրերով ու բիրե-
րով զիս բռնելու․ ամէն օր տաճա-
րին մէջ ձեզի հետ կը նստէի՝ ու կը
սորվեցընէի, և զիս չբռնեցիք ։
56 Բայց աս ամէն բաները եղաւ՝ որ
[փ]կատարուին մարգարէից գիրքերը ։
Ան ատենը [ք]բոլոր աշակերտները
թողուցին անիկայ՝ ու փախան ։
57 [օ]Եւ անոնք բռնեցին Յիսուսը՝
Կայիափա քահանայապետին տա-
րին, ուր որ դպիրները ու ծերերը
58 ժողվուեր էին ։ Եւ Պետրոս հե-
ռուանց անոր ետևէն գնաց՝ մինչև
քահանայապետին գաւիթը, ու
ներս մտաւ սպասաւորներուն հետ
59 նստաւ, որ վերջը տեսնէ ։ Իսկ
քահանայապետները ու ծերերը և
բոլոր ժողովքը Յիսուսի դէմ սուտ
վկայութիւն մը կը փնտռէին, որ
60 անիկայ մեռցընեն․ Ու չգտան․
թէև [ա]շատ սուտ վկաներ ալ եկան,
բայց չգտան ետքը [բ]երկու սուտ
61 վկայ եկան, Ու ըսին թէ, Ասիկայ
ըսաւ, [գ]Ես կրնամ Աստուծոյ տա-
ճարը քակել, և զանիկայ իրեք
62 օրուան մէջ շինել ։ [դ]Եւ քահա-
նայապետը ոտք ելլելով՝ ըսաւ ա-
նոր․ Պատասխան մը չե՞ս տար․
ի՞նչ կը վկայեն ասոնք քեզի դէմ ։
63 Եւ [ե]Յիսուս լուռ կը կենար ։ Պա-
տասխան տուաւ քահանայապետը՝
ու ըսաւ անոր․ [զ]Կենդանի Աստու-
ծով քեզ կ'երդմնցընեմ՝ որ մեզի
ըսես, թէ դո՞ւն ես Քրիստոս Որ-
64 դին Աստուծոյ ։ Ըսաւ անոր Յի-
սուս․ Դուն ըսիր․ բայց կ'ըսեմ ձե-
զի․ [է]ասկէ ետև պիտի տեսնէք Որ-
դին մարդոյ [ը]զօրութեան աջ կող-
մը նստած, ու երկնից ամպերուն
65 վրայ եկած ։ [թ]Ան ատենը քահանա-
յապետը իր հանդերձները պատռեց՝
ու ըսաւ․ Հայհոյութիւն ըրաւ․
ալ ի՞նչ պէտք է մեզի վկաներ․
ահա հիմա լսեցիք անոր հայհոյու-
66 թիւնը․ Ձեզի ի՞նչպէս կ'երևնայ․
անոնք պատասխան տուին ու ըսին․
67 [ժ]Մահապարտ է ։ [ի]Ան ատենը անոր
երեսը թուքին, ու բռունցքով ծե-
ծեցին անիկայ․ [լ]ոմանք ալ ապ-
68 տակ զարնելով՝ ըսին․ [խ]Մարգա-
րէացի՛ր մեզի դուն Քրիստոս, ո՞վ
է ան՝ որ քեզի զարկաւ ։
69 [ծ]Իսկ Պետրոս դուրսը գաւիթը
նստեր էր․ և մէկ աղախին մը եկաւ
անոր՝ ու ըսաւ․ Դուն ալ Գալի-
70 լեացի Յիսուսին հետն էիր ։ Բայց
անիկայ ամենուն առջևը ուրացաւ՝
ու ըսաւ․ Չեմ գիտեր դուն ի՛նչ
71 կը խօսիս ։ Ու երբոր դուռը ե-
լաւ, ուրիշ աղախին մը զանիկայ
տեսաւ, և հոն եղողներուն ըսաւ․
Ասիկայ ալ Յիսուս Նազովրեցիին
72 հետն էր ։ Եւ Պետրոս նորէն եր-
դում ընելով՝ ուրացաւ թէ, Ես
73 ան մարդը չեմ ճանչնար ։ Ու քիչ
մը ատենէն ետև հոն եղողները ե-
կան՝ և ըսին Պետրոսին․ Յիրաւի
դուն ալ անոնցմէ ես․ ինչու որ
[կ]քու զրուցուածքդ ալ քեզ յայտ-
74 նի կ'ընէ ։ Ան ատենը [հ]սկսաւ ա-
նիծել ու երդում ընել՝ ըսելով թէ,
Ես ան մարդը չեմ ճանչնար․ և
75 իսկոյն հաւը խօսեցաւ ։ Եւ Պետ-
րոս միտքը բերաւ Յիսուսին խօսքը՝
որ իրեն ըսեր էր թէ, [ձ]Դեռ հաւը
չխօսած՝ իրեք անգամ պիտի ուրա-
նաս զիս․ ու դուրս ելլելով՝ դառ-
նապէս լացաւ ։

## ԳԼ․ ԻԷ

1 Քրիստոս Պիղատոսի ձեռքը կը տրուի կապուած ։ 3 Յուդան խեղդամահ կ'ըլլայ ։ 19 Պիղատոս իր կնիկէն խրատուած՝ 24 իր ձեռքերը կը լուայ, 26 ու Բարաբբան կ'արձակէ ։ 29 Քրիստոս փուշերով կը պսակուի, 34 կը խաչուի, 39 կը նախատուի, 50 կը մեռնի ու կը թաղուի ։ 66 Քրիստոսի գերեզմանը Հըրէայք կը կնքեն, ու պահապան զինուորներ կը դնեն ։

1 Երբոր առտու եղաւ, [ա]բոլոր քա-
հանայապետները ու ժողովուր-
դին ծերերը Յիսուսի դէմ խոր-
հուրդ ըրին՝ որ զանիկայ մեռցընեն ։
2 Եւ կապելով զանիկայ տարին, ու
[բ]Պոնտացի Պիղատոս կուսակալին
ձեռքը տուին ։
3 [գ]Ան ատենը Յուդան՝ որ զանիկայ
մատնեց, տեսնելով թէ դատա-
պարտուեցաւ, զղջի եկաւ, ու
երեսուն արծաթը ետ դարձուց
քահանայապետներուն՝ և ծերե-
4 րուն, Ու ըսաւ․ Մեղայ, որ ան-
մեղ արիւն մատնեցի․ և անոնք
ըսին․ Մեզի ի՞նչ, դուն նայէ ։
5 Եւ արծաթը տաճարին մէջ ձգեց՝
[դ]ու դուրս ելաւ, և գնաց ինքզին-
6 քը խեղդեց ։ Քահանայապետներն
ալ արծաթը առնելով՝ ըսին․ Ար-
ժան չէ ատիկայ †կորբանին մէջ
դնել․ ինչու որ արեան գին է ։
7 Ուստի խորհուրդ ըրին, և անով

Յամի Տեառն 33

[ժ] Ղև. իդ. 16 ։ Յով. ժթ. 7 ։
[ի] Ես. ծ. 6 ։ ծգ. 3 ։ Գլ. իէ. 30 ։
[լ] Ղու. իբ. 63 ։ Յով. ժթ. 3 ։
[խ] Մար. ժդ. 65 ։ Ղու. իբ. 64 ։
[ծ] Մար. ժդ. 66 ։ Ղու. իբ. 55 ։ Յով. ժը. 16, 17, 25 ։
[կ] Ղու. իբ. 59 ։
[հ] Մար. ժդ. 71 ։
[ձ] Հմր 34 ։ Մար. ժդ. 30 ։ Ղու. իբ. 61, 62 ։ Յով. ժգ. 38 ։

[ա] Սաղ. բ. 2 ։ Մար. ժե. 1 ։ Ղու. իբ. 66 ։ իգ. 1 ։ Յով. ժը. 28 ։
[բ] Գլ. ի. 19 ։ Գործ. գ. 13 ։
[գ] Գլ. իզ. 14, 15 ։
[դ] Բ Թագ. ժէ. 23 ։ Գործ. ա. 18 ։
† Յն. տաճարին գանձանակը

Ցամի Տեառն 33

Ի Գոր . ա . 19 ։
* Ոմանք չունին Երեմիա անունը ։
Լ Զաք . ժա . 12 , 13 ։
Խ Մար . ժե . 2 ։ Ղու . իգ . 3 ։ Յով . ժը . 33 ։
Ը Յով . ժը . 37 ։ Ա Տիմ . զ . 13 ։
Ծ Գւ . իզ . 63 ։ Յով . ժթ . 9 ։
Ժ Գւ . իզ . 62 ։ Յով . ժթ . 10 ։
Ի Մար . ժե . 6 ։ Ղու . իգ . 17 ։ Յով . ժը . 39 ։
Լ Մար . ժե . 11 ։ Ղու . իգ . 18 ։ Յով . ժը . 40 ։ Գոր . դ . 14 ։
Ի Օր . իա . 6 ։

բրուտին արտը ծախու առին՝ օ-
տարներու գերեզմանատուն ըլլալու
8 համար ։ Աս պատճառով՝ ան ար-
տը ԻԱրեան արտ բուեցաւ մինչև
9 այսօր ։ Ան ատենը կատարուեցաւ
*Երեմիա մարգարէին ձեռքով ը-
սուած խօսքը . ԼԵւ առին երեսուն
արծաթը՝ գին կտրուածին գինը ,
որ Իսրայէլի որդւոցմէ ոմանք գին
10 կտրեցին , Ու տուին անիկայ բրու-
տին արտին , ինչպէս որ ինծի հրա-
ման ըրաւ Տէրը ։
11 Եւ Յիսուս կուսակալին առջևը
կայնեցաւ . և կուսակալը ԽՀարցուց
անոր՝ ու ըսաւ . Հրէից Թագա-
ւորը դո՞ւն ես ։ Եւ Յիսուս ըսաւ
12 անոր . ԸԴուն կ'ըսես ։ Ու քահա-
նայապետներէն և ծերերէն ամբաս-
տանուած ատենը Ծբնաւ պատաս-
13 խան մը՛ չտուաւ ։ Ան ատենը Պի-
ղատոս ըսաւ անոր . ԺՉե՞ս լսեր
թէ որչափ քեզի դէմ կը վկայեն
14 ատոնք ։ Եւ անոր բան մը պա-
տասխան չտուաւ , մինչև շատ զար-
մացաւ կուսակալը ։
15 ԻԲայց կուսակալը սովորութիւն
ունէր , որ տօնին ատենը կապուած
մը արձակէր ժողովուրդին , ո՛վ որ
16 ուզէին ։ Ան ատենը Բարաբբա
անունով մէկ երևելի բանտարկեալ
17 մը ունէին ։ Երբոր ժողվուեցան՝
ըսաւ անոնց Պիղատոս . Ո՞րը կ'ու-
զէք՝ որ ձեզի արձակեմ . Բարաբ-
բա՞ն , թէ Յիսուսը՝ որ Քրիստոս
18 կ'ըսուի . Քանզի գիտէր թէ նա-
խանձի համար մատնեցին զանի-
կայ ։
19 Ու երբոր անիկայ ատեանը նստեր
էր , անոր կնիկը Լը խրկեց անոր՝
ու ըսաւ . Դուն ան արդարին հետ
բան մը չունենաս . ինչու որ այ-
սօր երազիս մէջ շատ դիպուածներ
անցան գլխէս անոր համար ։
20 ԽԲայց քահանայապետները և
ծերերը ժողովուրդը համոզեցին ,
որ Բարաբբան խնդրեն՝ ու Յիսուսը
21 կորսնցնեն ։ Պատասխան տուաւ
կուսակալը՝ ու ըսաւ անոնց . Աս
երկուքէս ո՞րը կ'ուզէք՝ որ ձեզի
արձակեմ . և անոնք ըսին , Բա-
22 րաբբան . Ըսաւ անոնց Պիղատոս .
Հապա ի՞նչ ընեմ Յիսուսը՝ որ
23 Քրիստոս կ'ըսուի ։ Ամէնքն ալ
ըսին անոր . Թող խաչուի . և
կուսակալը ըսաւ . Բայց ի՞նչ չար
գործ ըրաւ . և անոնք ևս առաւել
կ'աղաղակէին ու կ'ըսէին . Թող
24 խաչուի ։ Եւ Պիղատոս տեսնե-
լով որ օգուտ մը չըլլար , հապա
ալ աւելի խռովութիւն կ'ըլլայ ,
ԻՋուր առաւ՝ ձեռքերը լուաց ժողո-
վուրդին առջևը՝ ու ըսաւ . Ես ատ
արդարին արիւնէն անպարտ եմ .
25 դուք մտածեցէք ։ ԼԵւ բոլոր ժո-
ղովուրդը պատասխան տալով՝ ը-
սաւ . ԾԱտոր արիւնը մեր վրայ՝ ու
26 մեր որդւոցը վրայ ըլլայ ։ Ան ա-
տենը Բարաբբան արձակեց անոնց ,
և ԿՅիսուսը ծեծելով՝ անոնց ձեռքը
տուաւ որ խաչուի ։
27 ՀԱն ատենը կուսակալին զի-
նուորները պալատին ներսը առին
Յիսուսը , ու բոլոր զինուորներուն
28 գունդը անոր վրայ ժողվեցին Եւ
զանիկայ մերկացընելով՝ Ձկարմիր
վերարկու մը հագցուցին անոր ։
29 ՂՈւ փուշերէ պսակ մը հիւսելով՝
անոր գլուխը դրին , ու եղէգ մը
անոր աջ ձեռքը . և անոր առջևը
ծնկան վրայ գալով՝ ծաղր կ'ընէին
զանիկայ . ու կ'ըսէին . Ողջոյն
30 քեզ՝ Հրէից Թագաւոր ։ Եւ
ՃԹքնելով անոր վրայ՝ եղէգը
կ'առնէին , ու անոր գլուխը կը
31 ծեծէին ։ Ու երբոր ծաղր ըրին
անիկայ , վերարկուն վրայէն հանե-
ցին , ու իր հանդերձները հագցու-
ցին անոր , Մև տարին զանիկայ
խաչը հանելու ։
32 Եւ Յդուրս ելլելով՝ ՆԿիւրենացի
մարդ մը գտան Սիմոն անունով ,
զանիկայ պահակ բռնեցին՝ որ ա-
33 նոր խաչը վերցընէ ։ Ու ՇԵկան
Գողգոթա ըսուած տեղը , որ է
34 գանկի տեղ . Եւ Ոլեղիով խառնած
քացախ տուին անոր՝ որ խմէ . ու
երբոր համը առաւ , խմել չէր
35 ուզեր ։ ՉԵւ զանիկայ խաչը հա-
նելով , անոր հանդերձները վիճա-
կով բաժնեցին , [որ մարգարէէն
ըսուածը կատարուի . ՊԻմ հան-
դերձներս իրենց մէջը բաժնեցին ,
և իմ պատմուճանիս վրայ վիճակ
36 ձգեցին ։ ] ՋՈւ նստեր անիկայ կը
37 պահէին ։ Եւ Ռանոր գլխուն վրայ
իր յանցանքը գրուած դրին թէ ,
Ասիկայ է Յիսուս՝ Հրէից Թա-
38 գաւորը ։ ՍԱն ատենը անոր հետ
երկու աւազակ խաչուեցան . մէկը
անոր աջ կողմէն , ու մէկը ձախ
կողմէն ։
39 Եւ Վանոնք որ կ'անցնէին՝ կը
հայհոյէին անոր , գլուխնին կը
40 շարժէին , Ու կ'ըսէին . ՏԴուն որ
տաճարը կը քակէիր , և իրեք
օրուան մէջ կը շինէիր , ինքզինքդ
ազատէ . ՐԹէ որ Աստուծոյ Որ-
41 դին ես , իջի՛ր ատ խաչէդ ։ Նոյն-
պէս ալ Ցքահանայապետները դպիր-
ներուն ու ծերերուն հետ ծաղր
42 ընելով՝ կ'ըսէին . Ուրիշները ա-
զատեց , ինքզինքը չկրնար ազատել .
թէ-որ Իսրայէլի Թագաւոր է ,
թող հիմա իջնէ՝ խաչէն , և իրեն
43 հաւատանք ։ ՒԱստուծոյ յուսա-
ցեր է , հիմա թող փրկէ՝ ատիկայ

Ցամի Տեառն 33

Ծ Օր . ժթ . 10 ։ Յես . ր . 19 ։ Բ Թագ . ա . 16 ։ Գ Թագ . ր . 23 ։ Գոր ե . 28 ։
Կ Ես . ծգ . 5 ։ Մար . ժե . 15 ։ Ղու . իգ . 16 , 24 , 25 ։ Յով . ժթ . 1 , 16 ։
Հ Մար . ժե . 16 ։ Յով . ժթ . 2 ։
Ձ Ղու . իգ . 11 ։
Ղ Սաղ . կթ . 19 ։ Ես . ծգ . 3 ։
Ճ Ես . ծ . 6 ։ Գւ . իզ . 67 ։
Մ Ես . ծգ . 7 ։
Յ Թւ . ժե . 35 ։ Գ Թագ . իա . 13 ։ Գոր . է . 57 ։ Եբր . ժգ . 12 ։
Ն Մար . ժե . 21 ։ Ղու . իգ . 26 ։
Շ Մար . ժե . 22 ։ Ղու . իգ . 33 ։ Յով . ժթ . 17 ։
Ո Սաղ . կթ . 21 ։ Տե՛ս Հճր 48 ։
Չ Մար . ժե . 24 ։ Ղու . իգ . 34 ։ Յով . ժթ . 24 ։
Պ Սաղ . իբ . 18 ։
Ջ Հճր 54 ։
Ռ Մար . ժե . 26 ։ Ղու . իգ . 38 ։ Յով . ժթ . 19 ։
Ս Ես . ծգ . 12 ։ Մար . ժե . 27 ։ Ղու . իգ . 32 , 33 ։ Յով . ժթ . 18 ։
Վ Սաղ . իբ . 7 ։ ճթ . 25 ։ Մար . ժե . 29 ։ Ղու . իգ . 35 ։
Տ Գւ . իգ . 61 ։ Յով . բ . 19 ։
Ր Գւ . իգ . 63 ։
Ց Սաղ . իբ . 8 ։

Ցամ. Տեառն 33

թէ կ'ուզէ անիկայ . ինչու որ
ըսաւ թէ , Ես Որդի Աստուծոյ եմ ։
44 ⁻Իր հետը խաչուած աւազակներն
ալ նոյնպէս կը նախատէին զա-
նիկայ ։
45 ⁺Եւ վեցերորդ ժամէն մինչև ին-
ներորդ ժամը՝ բոլոր երկրին վրայ
46 խաւար եղաւ ։ Եւ ժամը իննին
ատենները՝ ⁺Յիսուս մեծ ձայնով
աղաղակեց՝ ու ըսաւ . Էլի՛ Էլի՛
լամա սաբաքթանի . որ ըսել է՝
•Աստուած իմ՝ Աստուած իմ ,
47 ինչո՞ւ զիս թողուցիր ։ Անոնցմէ
ոմանք՝ որ հոն կայներ էին , երբոր
լսեցին՝ կ'ըսէին . Անիկայ Եղիան
48 կը կանչէ ։ Եւ շուտ մը անոնցմէ
մէկը վազեց սպունգ մը առաւ՝
ᶠքացախով լեցուց , ու եղէգի մը
անցընելով տուաւ անոր որ խմէ ։
49 Ու մէկալները կ'ըսէին . Թող տուր՝
տեսնենք թէ Եղիան կու գա՞յ ա-
նիկայ ազատելու ։
50 ⁻Եւ Յիսուս դարձեալ մեծ ձայ-
նով աղաղակեց՝ ու հոգին աւան-
դեց ։
51 Եւ ահա ᵇտաճարին վարագոյրը
վերէն 'ի վար երկուքի ճեղքուե-
ցաւ , ու երկիրը շարժեցաւ , և
52 քարերը պատռեցան ։ Եւ գերեզ-
մանները բացուեցան , ու շատ
սուրբ ննջեցեալներու մարմիններ
53 յարութիւն առին . Եւ գերեզ-
մաններէն ելան անոր յարութենէն
ետև , մտան սուրբ քաղաքը , ու
շատերուն երևցան ։
54 ⁺Բայց հարիւրապետը և անոր
հետ Յիսուսը պահողները՝ երբոր
տեսան երկրաշարժը ու եղած բա-
ները , շատ վախցան՝ ու ըսին .
Յիրաւի ասիկայ Որդի Աստուծոյ
էր ։
55 Եւ հոն շատ կիներ կային որ
հեռուէն կը նայէին , ᵀորոնք
Գալիլեայէն Յիսուսի ետևէն եկան
իրեն ծառայութիւն ընելու .
56 ᵇՈրոնց մէջն էր Մարիամ Մագ-
դաղենացին , և Յակոբոսին ու
Յովսեսին մայրը Մարիամ , և
Զեբեդէոսի որդւոցը մայրը ։
57 ᶻՈւ երբոր իրիկուն եղաւ , Արի-
մաթիայէն հարուստ մարդ մը եկաւ՝
որուն անունը Յովսէփ էր , որ ինքն
58 ալ Յիսուսի աշակերտ էր ։ Անի-
կայ Պիղատոսին քովը երթալով՝
Յիսուսին մարմինը խնդրեց . ան
ատենը Պիղատոս հրաման ըրաւ՝ որ
59 մարմինը տրուի ։ Եւ Յովսէփ
մարմինը առաւ՝ մաքուր կտաւով
60 պատեց , Ու ᵇդրաւ իր նոր գերեզ-
մանին մէջ՝ որն որ քարէ փորած
էր . և գերեզմանին դուռը մեծ քար
61 մը գլտորցընելով գնաց ։ Եւ հոն
էր Մարիամ Մագդաղենացին՝ և

⁻Մար. ժե. 32 ։ Ղու. իգ. 39 ։
⁺Ամով. ը. 9 ։ Մար. ժե. 33 ։ Ղու. իգ. 44 ։
⁺Եբր. ե. 7 ։
•Սաղ. իբ. 1 ։
ᶠՍաղ. կթ. 21 ։ Մար. ժե. 36 ։ Ղու. իգ. 36 ։ Յով. ժթ. 29 ։
⁻Մար. ժե. 37 ։ Ղու. իգ. 46 ։
ᵇԵլ. իզ. 31 ։ բ Մն. գ. 14 ։ Մար. ժե. 38 ։ Ղու. իգ. 45 ։
⁺Հմր 36 ։ Մար. ժե. 39 ։ Ղու. իգ. 47 ։
ᵀՂու. ը. 2, 3 ։
ᵇՄար. ժե. 40 ։
ᶻՄար. ժե. 42 ։ Ղու. իգ. 50 ։ Յով. ժթ. 38 ։
ᵇԵս. ծգ. 9 ։

միւս Մարիամը՝ գերեզմանին դի-
մացը նստած ։
62 Եւ հետևեալ օրը՝ որ ուրբաթէն
ետև էր , քահանայապետները ու
փարիսեցիները ժողվուեցան Պի-
63 ղատոսին քովը , Ու ըսին . Տէ՛ր՝
կը յիշենք որ ան մոլորեցուցիչը
իր կենդանութեան ատենը կ'ըսէր
թէ , ᶻԻրեք օրէն ետև յարութիւն
64 կ'առնեմ ։ Ուստի հրաման ըրէ որ
մինչև երրորդ օրը գերեզմանին ըզ-
գուշութիւն ընեն . չըլլայ թէ իր
աշակերտները գիշերով գան՝ զանի-
կայ գողնան , և ժողովուրդին ըսեն
թէ , Մեռելներէն յարութիւն ա-
ռաւ . ու ետքի մոլորութիւնը առ-
65 ջինէն գէշ ըլլայ ։ Պիղատոս ա-
նոնց ըսաւ . Դուք ունիք պահա-
պան զինուորներ . գացէ՛ք՝ զգու-
շութիւն ըրէք ինչպէս որ գիտէք ։
66 Անոնք ալ գացին գերեզմանին ըզ-
գուշութիւն ըրին , ᵇքարը կնը-
քելով ու պահապան զինուորներ
դնելով ։

## ԳԼ. ԻԸ

1 Հրեշտակը կ'աւետէ կանանց՝ Քրիստոսի յա-
րութիւնը ։ 9 Քրիստոս ինքը կ'երևնայ անոնց ։
11 Քահանայապետները սուտ կու տան զի-
նուորներուն որ ըսեն թէ անիկայ իր գերեզմա-
նէն գողցուեցաւ ։ 16 Քրիստոս իր աշակերտ-
ներուն կ'երևնայ , 19 և կը խրկէ զանոնք բո-
լոր հեթանոսները աշակերտելու և մկրտելու ։

1 Եւ շաբաթ ⁻գիշերը՝ ը մէկշաբ-
թին կը լուսնար , եկաւ Մարի-
ամ Մագդաղենացին , ᵇու միւս
Մարիամը՝ գերեզմանը տեսնելու ։
2 Եւ ահա մեծ երկրաշարժ մը եղաւ .
ինչու որ Տէրոջը ⁺հրեշտակը երկինք-
քէն իջնելով , գնաց դռնէն մէկդի
գլտորցուց քարը , ու անոր վրայ
3 նստաւ ։ ᵀԵւ անոր տեսքը փայլակի
պէս էր , ու անոր հանդերձները
4 ձիւնի պէս ճերմակ ։ Եւ անոր
վախէն պահապանները խռովեցան ,
5 ու մեռածի պէս եղան ։ Պատաս-
խան տուաւ հրեշտակը՝ ու ըսաւ
կիներուն . Դուք մի՛ վախնաք .
քանզի գիտեմ որ կը փնտռէք Յի-
6 սուսը՝ որ խաչուեցաւ . Անիկայ հոս
չէ , ինչու որ յարութիւն առաւ ,
ᵇինչպէս որ ըսաւ . եկէ՛ք տեսէ՛ք ան
տեղը՝ ուր որ Տէրը պառկած էր ։
7 Եւ շուտ մը գացէ՛ք անոր աշա-
կերտներուն ըսէք , թէ անիկայ
մեռելներէն յարութիւն առաւ . և
ᶻահա ձեզմէ առաջ Գալիլեա կ'եր-
թայ , հոն պիտի տեսնէք զանիկայ .
8 ահա ձեզի ըսի ։ Եւ անոնք
շուտ մը գերեզմանէն ելան վախով
ու մեծ ուրախութիւնով՝ և կը վա-
զէին աշակերտներուն պատմելու ։
9 Ու երբոր կ'երթային անոր աշա-
կերտներուն պատմելու , ահա ᵇՅի-
սուս անոնց դէմը ելաւ՝ ու ըսաւ .

ᶻՓլ. ժզ. 21 ։ ժէ. 22 ։ ի. 19 ։ իզ. 61 ։ Մար. ը. 31 ։ ժ. 34 ։ Ղու. թ. 22 ։ ժը. 33 ։ իդ. 6, 7 ։ Յով. բ. 19 ։
ᵇԴան. զ. 17 ։
⁻Մար. ժզ. 1 ։ Ղու. իդ. 1 ։ Յով. ի. 1 ։
ᵇԳլ. իէ. 56 ։
⁺Տես Մար. ժզ. 5 ։ Ղու. իդ. 4 ։ Յով. ի. 12 ։
ᵀԴան. ժ. 6 ։
ᵇՓլ. ժբ. 40 ։ ժզ. 21 ։ ժէ. 22 ։ ի. 19 ։
ᶻՓլ. իզ. 32 ։ Մար. ժզ. 7 ։
ᵇՏես Մար. ժզ. 9 ։ Յով. ի. 14 ։

Ցամի Տեառն 33

ըՏեւ Յօհ. ի. 17 ։ Հռով. ը. 29 ։ Եբր. բ. 11 ։

Յան. ան. նոց

Ողջոյն ձեզ ։ Եւ անոնք մօտենա-
լով՝ անոր ոտքերը բռնեցին , ու
10 երկրպագութիւն ըրին անոր ։ Ան
ատենը Յիսուս ըսաւ անոնց . Մի
վախնաք , գացէ՛ք ըիմ եղբայրնե-
րուս ըսէ՛ք՝ որ Գալիլեա երթան ,
ու հոն զիս պիտի տեսնեն ։
11 Երբոր անոնք կ'երթային՝ աՀա
պահապան զինուորներէն մէկ քա-
նին քաղաքը եկան , ու քահանա-
յապետներուն պատմեցին բոլոր ե-
12 ղած բաները ։ Եւ անոնք ծերե-
րուն հետ մէկտեղ ժողվուելով՝
ու խորհուրդ ընելով՝ շատ ըս-
13 տակ տուին զինուորներուն , Ու-
ըսին . Ըսէ՛ք թէ , Անոր աշա-
կերտները գիշերով եկան անիկայ
գողցան՝ երբոր մենք կը քնանա-
14 յինք ։ Եւ թէ որ աս բանը կուսա-
կալին ականջը հասնի , մենք անիկայ
կը հաճեցնենք , և ձեզ *ապահով
15 կ'ընենք ։ Անոնք ալ ստակը ա-
ռին՝ ու սորվածնուն պէս ըրին . և
աս ձայնը Հրէից մէջ տարածուե-
ցաւ մինչև աս օրս ։
16 Իսկ տասնումէկ աշակերտները
գացին Գալիլեա ան լեռը՝ ըուր որ
17 Յիսուս իրենց որոշեր էր ։ Ու
երբոր զանիկայ տեսան , երկրպա-
գութիւն ըրին անոր , բայց ոմանք
18 տարակուսեցան ։ Եւ Յիսուս մօ-
տենալով՝ խօսեցաւ անոնց ու ը-
սաւ . ժԱմէն իշխանութիւն ինծի
տրուեցաւ երկինքի ու երկրի մէջ ։
19 էՈւրեմն գացէ՛ք Ըբոլոր ազգերը ա-
շակերտեցէ՛ք . մկրտեցէ՛ք զանոնք
յանուն Հօր և Որդւոյ և Հոգւոյն
20 Սրբոյ . ԽՍորվեցուցէ՛ք անոնց որ
ան ամէն բաները պահեն՝ ինչ որ
ես ձեզի պատուիրեցի . և աՀա ա-
մէն օր ես ձեզի հետ եմ մինչև աշ-
խարհիս վերջը ։

Ցամի Տեառն 33

ըԳէ. իզ. 32 ։ Հմր 7 ։ ժԴան. է. 13. 14 ։ Գէ. ժա. 27 ։ ժզ. 28 ։ Ղու. ա. 32 ։ ժ. 22 ։ Յօհ. գ. 35 ։ ե. 22 ։ ժդ. 3 ։ ժէ. 2 ։ Գոր. ր. 36 ։ Հռով. ժդ. 9 ։ ա Կոր. ժե. 27. Եփե. ա. 10. 21 ։ Փիլ. բ. 9. 10 . Եբր. ա. 2 ։ բ. 8 ։ ) ա Պետ. գ. 22 ։ Յայտ. ժէ. 14 ։

էՄար. ժզ. 15 ։ ըԵս. ծբ. 10 ։ Ղու. իդ. 47 ։ Գոր. բ. 38. 39 ։ Հռով. ժ. 18 ։ Կող. ա. 23 ։ ԽԳոր. բ. 42 ։

# ԱՒԵՏԱՐԱՆ ԸՍՏ ՄԱՐԿՈՍԻ

Ցամի Տեառն 26 վերջը

## ԳԼՈՒԽ Ա

1 Յովհաննէս մկրտչին պաշտօնը ։ 9 Յիսուս կը մկրտուի . 12 կը փորձուի . 14 կը քարոզէ . 16 իրեն հետևելու կը կանչէ Պետրոսը , Անդրէասը , Յակոբոսը և Յովհաննէսը . 23 կը բժշկէ դիւահար մը , 29 Պետրոսին զոքանչը . 32 ու շատ հիւանդներ 41 և կը մաքրէ բորոտը ։

1 ªՍստուծոյ Որդւոյն Յիսուս Քը-
րիստոսի աւետարանին սկիզ-
2 բը ։ Ինչպէս որ Մարգարէից մէջ
գրուած է . բԱհա ես իմ դեսպանս
կը խրկեմ քու երեսիդ առջևէն ,
որ քու ճամբադ պիտի պատրաս-
3 տէ քու առջևէդ ։ գԱնապատի մէջ
կանչողին ձայնը . Տէրոջը ճամբան
պատրաստեցէ՛ք , անոր շաւիղները
4 շիտկեցէ՛ք . դՅովհաննէս անապա-
տին մէջ կը մկրտէր , և ապաշխա-
րութեան մկրտութիւն կը քարո-
զէր՝ մեղքերու թողութեան հա-
5 մար ։ եԵւ բոլոր Հրէաստանի
երկիրը՝ ու Երուսաղեմացիք կ'եր-
թային անոր , ու ամէնքը կը մկը-
տուէին անկէ Յորդանան գետին
մէջ՝ մեղքերնին խոստովանելով ։
6 Եւ Յովհաննէս հագեր էր ուղտի
մազ , և իր մէջքը կաշիէ գօտի .
ու իր կերակուրը էՄարախ ու վայ-
7 րենի մեղր էր ։ Եւ կը քարոզէր
ու կ'ըսէր . ըԻմ ետևէս ինծմէ զօ-
րաւորը կու գայ , որ ես արժանի
չեմ ծռելու՝ ու անոր կօշիկներուն
8 կապերը արձըկելու ։ ըԵս ձեզ
ջրով մկրտեցի , բայց անիկայ ձեզ
ժՍուրբ Հոգիով պիտի մկրտէ ։
9 էՈւ եղաւ որ՝ ան օրերը Յիսուս
Գալիլեայի Նազարեթէն եկաւ , ու
Յովհաննէսէն մկրտուեցաւ Յոր-
10 դանանու մէջ ։ ԼԵւ շուտ մը
ջուրէն ելլելուն պէս՝ երկինքը բա-
ցուած տեսաւ , և Հոգին աղաւնիի
11 պէս՝ որ իր վրայ կ'իջնէր ։ Եւ
ձայն մը եկաւ երկինքէն՝ որ կ'ըսէր .
ԽԴուն ես իմ սիրելի Որդիս , որուն
հաւներ եմ ։
12 ծԵւ շուտ մը Հոգին անապատը
13 հանեց զանիկայ ։ Ու քառասուն օր
հոն էր անապատին մէջ՝ Սատա-
նայէն փորձուած . և գազաններու
հետ էր , կու հրեշտակները իրեն
սպասաւորութիւն կ'ընէին ։
14 հԵւ Յովհաննէսին մատնուելէն
ետև՝ Յիսուս Գալիլեա եկաւ , ձԱս-
տուծոյ արքայութեան աւետարա-
15 նը կը քարոզէր՝ ու կ'ըսէր . Թէ
ղժամանակը լրացած է , և ճԱս-

Ցամի Տեառն 26 վերջը

ªՄատ. ժգ. 33 ։ Ղու. ա. 35 ։ Յօհ. ա. 34 ։ բՄաղ. գ. 1 ։ Մատ. ժա. 10 ։ Ղու. է. 27 ։ գԵս. խ. 3 ։ Մատ. գ. 3 ։ Ղու. գ. 4 ։ Յօհ. ա. 15 , 23 ։ դՄատ. գ. 1 ։ Ղու. գ. 3 ։ Յօհ. գ. 23 ։ եՄատ. գ. 5 ։ զՄատ. գ. 4 ։ էՂև. ժա. 22 ։

ըՄատ. գ. 11 ։ Յօհ. ա. 27 ։ Գոր. ժդ. 25 ։ ըԳոր. ա. 5 ։ ժա. 16 ։ ժթ. 4 ։ ժԵս. խդ. 3 ։ Յովէլ. բ. 28 ։ Գոր. բ. 4 ։ ժ. 45 ։ ժա. 15 . 16 ։ ա Կոր. ժբ. 13 ։ էՄատ. գ. 13 ։ Ղու. գ. 21 ։ ԼՄատ. գ. 16 ։ Յօհ. ա. 32 ։ ԽՍաղ. բ. 7 ։ Մատ. գ. 17 ։ Գէ. թ. 6 ։ ծՄատ. դ. 1 ։ Ղու. դ. 1 ։ Յա. Տ. 27 կՄատ. դ. 11 ։ հՄատ. դ. 12 ։ ձՄատ. դ. 23 ։ Յա. Տ. 30 ղԴան. թ. 25 ։ Գաղ. դ. 4 ։ Եփե. ա. 10 ։ ճՄատ. դ. 2 ։ դ. 17 ։

Յամ Տեառն 30

տուծոյ Թագաւորութիւնը մօտե-
ցած է․ ապաշխարեցէք՝ ու աւե-
տարանին հաւատացէք։
16 Երբոր Գալիլեացւոց ծովուն
քովէրը կը պտըտէր, տեսաւ Սի-
մոնը՝ ու Սիմոնին եղբայրը Անդրէ-
ասը՝ ծովը ուռկան ձգած, ինչու
17 որ ձկնորս էին։ Եւ Յիսուս ըսաւ
անոնց․ Իմ ետեւէս եկէք, ու ես
ձեզ ընեմ որ մարդու որսորդ ըլ-
18 լաք։ Անոնք ալ շուտ մը իրենց
ուռկանները թողուցին, ու անոր
19 ետեւէն գացին։ Եւ անկէ քիչ
մը առաջ երթալով տեսաւ Զե-
բեդեան Յակոբոսը ու անոր եղ-
բայրը Յովհաննէսը, որ անոնք ալ
նաւին մէջ ուռկանները կը կար-
20 կըտէին․ Եւ շուտ մը զանոնք կան-
չեց․ անոնք ալ իրենց հայրը Զե-
բեդէոսը վարձկաններուն հետ նա-
ւին մէջ ձգելով, անոր ետեւէն
գացին։
21 Ու մտան Կափառնայում․ և
իսկոյն շաբաթ օրը ժողովարանը
22 մտնելով կը սորվեցնէր։ Եւ կը
զարմանային անոր վարդապետու-
թեանը վրայ, ինչու որ իշխանու-
թիւն ունեցողի մը պէս կը սորվե-
ցընէր անոնց, ու չէ թէ դպիրնե-
23 րուն պէս։ Եւ անոնց ժողովարա-
նին մէջ մարդ մը կար, որ պիղծ
ոգի ունէր իր ներսիդին, որ աղա-
24 ղակեց՝ ըսելով․ Թող տուր,
դուն մեզի հետ ի՞նչ բան ունիս՝
Յիսուս Նազովրեցի․ միթէ մեզ
կորսնցընելու եկար․ գիտեմ քեզ՝
25 ով ես, Աստուծոյ Սուրբը։ Եւ
Յիսուս սաստեց անոր՝ ըսելով․
26 Պապանձէ ու ելի՛ ատկէ։ Եւ
պիղծ ոգին սաստիկ ցնցեց զանի-
կայ, ու մեծ ձայնով մը աղաղա-
27 կեց, ու անկէ ելաւ։ Եւ ամէնքը
զարմացան, անանկ որ իրարու հար-
ցուփորձ կ'ընէին՝ ու կ'ըսէին․ Աս
ի՞նչ է․ ի՞նչ նոր վարդապետու-
թիւն է աս, որ իշխանութիւնով
պիղծ ոգիներուն ալ կը հրամայէ,
28 ու իրեն կը հնազանդին։ Եւ շուտ
մը իր համբաւը Գալիլեացւոց ամէն
կողմերը ելաւ։
29 Եւ շուտ մը ժողովարանէն ելլե-
լով՝ Սիմոնին ու Անդրէասին տունը
մտան՝ Յակոբոսին և Յովհաննէսին
30 հետ։ Ու Սիմոնին զոքանչը ջեր-
մէ բռնուած պառկած էր․ և շուտ
31 մը անոր համար ըսին իրեն։ Ու
Յիսուս մօտեցաւ անոր ձեռքէն
բռնեց՝ վերցուց զանիկայ․ և իսկոյն
ջերմը թող տուաւ զանիկայ, ու
անոնց սպասաւորութիւն կ'ընէր։
32 Ու երբոր իրիկուն եղաւ՝ արե-
գակին մտած ատենը, բոլոր հի-
ւանդները և դիւահարները իրեն

Մատ․ դ․ 18։ Ղու․ ե․ 4։
Մատ․ ժթ․ 27։ Ղու․ ե․ 11։
Մատ․ դ․ 21։
Յա․ Տ․ 31
Մատ․ դ․ 13։ Ղու․ դ․ 31։
Մատ․ է․ 29։
Ղու․ դ․ 33։
Մատ․ ը․ 29։
Հմր 34։
Գլ․ թ․ 19։
Մատ․ ը․ 14։ Ղու․ դ․ 38։
Մատ․ ը․ 16։ Ղու․ դ․ 41։

33 կը բերէին։ Ու բոլոր քաղաքը
34 դուռը ժողվուեր էր։ Եւ շատ
հիւանդներ կերպ կերպ ցաւերէն
բժշկեց, ու շատ դեւեր հանեց․ ու
դեւերուն խօսիլ չէր տար, ինչու
որ զինքը կը ճանչնային։
35 Եւ առաւօտուն շատ կանուխ
ելլելով դեռ չլուսցած՝ ելաւ ու
գնաց անապատ տեղ մը, և հոն ա-
36 ղօթք կ'ընէր։ Ու Սիմոն և իր հե-
տը եղողները գացին անոր ետեւէն։
37 Ու երբոր գտան զանիկայ՝ ըսին
անոր թէ, Ամէնը քեզ կը փընտ-
38 ռեն։ Եւ ըսաւ անոնց․ Եկէ՛ք
երթանք մերձակայ գիւղաքաղաք-
ները, որ հոն ալ քարոզեմ․ քան-
զի աս բանիս համար ելեր եմ։
39 Եւ անոնց ժողովարաններուն մէջը
կը քարոզէր բոլոր Գալիլեայի մէջ,
ու դեւեր կը հանէր։
40 Մէկ բորոտ մը եկաւ անոր՝ կ'ա-
ղաչէր, ծունկ կը չոքէր՝ ու կ'ըսէր
անոր․ Թէ որ ուզես, կրնաս զիս
41 մաքրել։ Եւ Յիսուս խղճալով՝
ձեռքը երկընցուց, դպաւ անոր՝ ու
ըսաւ անոր․ Կ'ուզեմ՝ մաքրուէ։
42 Ու երբոր աս ըսաւ անոր, շուտ մը
բորոտութիւնը անկէ գնաց, ու
43 մաքրուեցաւ։ Եւ սաստիկ պա-
տուէր տալով անոր՝ շուտ մը դուրս
հանեց զանիկայ, ու ըսաւ անոր․
44 Զգո՛յշ կեցիր՝ մէկուն բան մը չը-
սես․ հապա գնա՛ քեզ քահանային
ցուցո՛ւր, և տո՛ւր քու մաքրուե-
լուդ ընծան, որ Մովսէս պա-
տուիրեց՝ անոնց վկայութիւն ըլ-
45 լալու համար։ Բայց անիկայ
ելլելով՝ սկսաւ շատ հրատարակել,
ու բանը տարածել, անանկ որ՝ ալ
ինքը չէր կրնար յայտնի կերպով
քաղաք մը մտնել․ հապա դուրսը
անապատ տեղուանք էր, և ամէն
կողմերէն իրեն կու գային։

## ԳԼ․ Բ

1 Քրիստոս կը բժշկէ անդամալոյծ մը․ 14 իրեն հետեւելու կը կանչէ Մատթէոս մաքսաւորը․ 15 մաքսաւորներու ու մեղաւորներու հետ հաց կ'ուտէ․ 18 կ'արդարացընէ իր աշակերտներուն ծոմ չպահելը․ 23 և շաբաթ օրը ցորենի հասկեր փրցընել ուտելը։

1 Ու նորէն Կափառնայում մտաւ
2 քանի մը օրէն ետև․ Ու լսուե-
ցաւ որ անիկայ տան մէջ է․ և
շուտով շատ մարդիկ ժողվուեցան,
անանկ որ՝ ալ տեղ չկար, ո՛չ ալ
դրանը քովերը․ ու կը խօսէր ա-
3 նոնց Աստուծոյ խօսքը։ Եւ կու
գային իրեն չորս մարդով վեր-
ցուած անդամալոյծ մը կը բերէին։
4 Ու երբոր բազմութենէն չէին կըր-
նար անոր մօտենալ, քակեցին տանը
յարկը՝ ուր որ Յիսուս էր, ու ծակ
մը բանալով՝ վար իջեցուցին մահի-

Յամ Տեառն 31
Գլ․ գ․ 12։ Ղու․ դ․ 42։ Տես Գոր․ ժզ․ 17, 18։
Ղու․ դ․ 43։
Ղու․ դ․ 44։
Ես․ կա․ 1։ Յով․ ժզ․ 28։ ժէ․ 4։
Մատ․ դ․ 23։ Ղու․ դ․ 45։
Մատ․ ը․ 2։ Ղու․ ե․ 12։
Ղև․ ժդ․ 3, 4, 10։ Ղու․ ե․ 14։
Ղու․ ե․ 15։
Գլ․ բ․ 13։
Մատ․ թ․ 1։ Ղու․ ե․ 18։

Ցամ. Տեառն 31

ծը՝ որուն վրայ պառկած էր ան-
5 դամալոյծը ։ Եւ Յիսուս անոնց
հաւատքը տեսնելով՝ ըսաւ անդա-
մալոյծին. Որդեակ՛ քու մեղքերդ
6 քեզի ներուած են ։ Ու դպիրներէն
մէկ քանիները կային՝ որ հոն նըս-
տեր էին, և իրենց սրտերուն մէջ
7 կը խորհէին՝ ըսելով. Ինչու համար
՚ասիկայ ասանկ հայհոյութիւններ
կը խօսի. Ո՞վ կրնայ մեղաց թո-
ղութիւն տալ, բայց միայն Աս-
8 տուած ։ Եւ Յիսուս իսկոյն իմա-
նալով իր հոգիին մէջ՝ որ անոնք
այնպէս կը խորհին մէջերնին, ը-
սաւ անոնց. Ատ ի՞նչ կը խորհիք
9 սրտերնուդ մէջ ։ Ո՞րը աւելի դիւ-
րին է, անդամալոյծին ըսել՝ Քու
մեղքերդ ներուած են, եթէ ըսել.
10 Ելի՛ր, մահիճդ ա՛ռ ու քալէ ։ Բայց
որպէս զի գիտնաք՝ թէ Որդին մար-
դոյ իշխանութիւն ունի երկրի վը-
րայ մեղքերու թողութիւն տալու,
11 (ըսաւ անդամալոյծին,) Քեզի
կ'ըսեմ, Ելի՛ր, մահիճդ ա՛ռ ու
12 տո՛ւնդ գնա ։ Ան ալ շուտ մը
ելաւ, և իր մահիճը առնելով՝ ա-
մենուն առջևը դուրս ելաւ, ա-
նանկ որ ամէնքը ապշած մնացին,
և փառք տուին Աստուծոյ՝ ու ը-
սին թէ, Ասանկ բան մը ամենևին
տեսած չենք ։
13 Եւ ելաւ նորէն ծովեզերքը, ու
բոլոր ժողովուրդը իրեն կու գային,
14 և կը սորվեցընէր անոնց ։ Ու
երբոր կ'անցնէր, տեսաւ Ղևի Ալ-
փէոսեանը, որ մաքս ընդունելու
տեղը նստեր էր. ու ըսաւ անոր.
Եկո՛ւր իմ ետևէս. ան ալ ելաւ
15 անոր ետևէն գնաց ։ Ու եղաւ որ
երբոր սեղան նստած էր անոր տա-
նը մէջ, շատ մաքսաւորներ ու մե-
ղաւորներ ալ սեղան նստած էին
Յիսուսի հետ ու անոր աշակերտ-
ներուն հետ. քանզի շատուոր էին,
16 ու անոր ետևէն գացին ։ Եւ դը-
պիրները ու փարիսեցիները երբոր
տեսան՝ թէ անիկայ մաքսաւորնե-
րուն ու մեղաւորներուն հետ կ'ու-
տէ, ըսին անոր աշակերտներուն.
Ինչո՞ւ համար մաքսաւորներուն ու
մեղաւորներուն հետ կ'ուտէ ու կը
17 խմէ ։ Եւ Յիսուս երբոր լսեց,
ըսաւ անոնց. Առողջներուն բժիշկ
պէտք չէ, հապա հիւանդներուն.
ես արդարները կանչելու չեկայ,
հապա մեղաւորները ։
18 Եւ Յովհաննէսին աշակերտնե-
րը ու փարիսեցիները ծոմ կը պա-
հէին. և եկան ու ըսին անոր. Ին-
չո՞ւ Յովհաննէսին ու փարիսեցի-
ներուն աշակերտները ծոմ կը պա-
հեն, ու քու աշակերտներդ ծոմ
19 չեն պահեր ։ Եւ Յիսուս ըսաւ
անոնց. Միթէ կարելի՞ է որ
հարսնիքին տղաքը՝ քանի որ փե-
սան իրենց հետն է, ծոմ պահեն.
որչափ ժամանակ որ փեսան իրենց
հետը ունին, կարելի չէ ծոմ պա-
20 հել ։ Բայց օրեր պիտի գան՝ որ
երբ փեսան իրենցմէ վերցուի, հա-
պա ան օրը ծոմ պիտի պահեն ։
21 Մէկը կարկըտան չձգեր նոր լաթի
կտոր մը հին հանդերձի վրայ. թէ
չէ՝ ան նորը որ անոր լրութեանը
համար դրուած էր, հինէն կ'առնէ,
ու պատռուածքը ալ աւելի գէշ
22 կ'ըլլայ. Ո՛չ ալ մէկը նոր գինին
հին տիկերու մէջ կը դնէ. եթէ
ոչ՝ նոր գինին տիկերը կը պատռէ,
ու գինին կը թափի, և տիկերը
կը կորնչին, հապա նոր գինին նոր
տիկերու մէջ դնելու է ։
23 Ու եղաւ որ շաբաթ օրը ինքը
արտերուն մէջէն կ'անցնէր. և իր
աշակերտները որ կ'երթային, սկը-
24 սան հասկեր փրցընել ։ Ու
փարիսեցիները ըսին իրեն. Նայէ՛
շաբաթ օրը ի՞նչ կ'ընեն, որ ար-
25 ժան չէ ։ Ինքն ալ անոնց ըսաւ.
Բնաւ չէ՞ք կարդացեր դուք Դաւի-
թին ըրածը՝ երբոր պէտք ունեցաւ,
և անօթեցաւ ինքը՝ ու անոնք որ իր
26 հետն էին. Ինչպէս մտաւ Աստու-
ծոյ տունը Աբիաթար քահանայա-
պետին օրովը, և առաջաւորու-
թեան հացերը կերաւ, ու տուաւ
անոնց ալ՝ որ իր հետն էին. Որ
ուտել մը օրինաւոր չէ ուտել, բայց
27 միայն քահանաներուն ։ Եւ ըսաւ
անոնց. Շաբաթը մարդուն հա-
մար եղաւ, ու չէ թէ մարդը շա-
28 բաթին համար ։ Ուրեմն Որդին
մարդոյ շաբաթին ալ տէրն է ։

## ԳԼ. Գ.

1 Քրիստոս կը բժշկէ ձեռքը չորցած մարդը ։ 10 և ուրիշ շատ ցաւագարներ. 11 պիղծ ոգիները կը յանդիմանէ. 13 իր տասուերկու առաքեալները կ'ընտրէ. 22 փաստով կը ցուցընէ որ անոնց ըսածը՝ թէ ինքը Բէեղզեբուղով դևեր կը հանէ, հայհոյութիւն է. 31 և կ'իմացընէ թէ որո՛նք են իր եղբայրը՝ քոյրը և մայրը ։

1 Եւ նորէն ժողովարանը մտաւ.
ու հոն մարդ մը կար, որուն
2 ձեռքը չորցած էր ։ Եւ իրեն կը
սպասէին՝ թէ արդեօք շաբաթ օրը
զանիկայ պիտի բժշկէ՞, որ իր վրա-
3 յով ամբաստանութիւն ընեն ։ Եւ
ինքը ձեռքը չորցած մարդուն ը-
4 սաւ. Ելի՛ր մէջտեղը կայնէ՛ ։ Ու
ըսաւ անոնց. Շաբաթ օրը բա-
րի՞ք ընել արժան է, թէ չարիք
ընել. հոգի մը ապրեցընե՞լ, թէ
մեռցընել. բայց անոնք լուռ կե-
5 ցան ։ Եւ Յիսուս բարկութեամբ
շուրջանակի անոնց վրայ նայելով՝

Բ Յոբ. Ժդ. 4 ; Ես. Խգ. 25 ։ Գ Մատ. Թ. 4 ։ Դ Մատ. Թ. 5 ։ Ե Մատ. Թ. 9 ։ Զ Մատ. Թ. 9 ; Ղու. Ե. 27 ։ Է Մատ. Թ. 10 ։ Ը Մատ. Թ. 12, 13 ; Ժբ. 11 ; Ղու. Ե. 31, 32 ; ԺԹ. 10 ; Ա Տիմ. Ա. 15 ։ Թ Մատ. Թ. 14 ; Ղու. Ե. 33 ։

Ժ Մատ. Ժբ. 1 ; Ղու. Զ. 1 ։ ԺԱ Օր. Իգ. 25 ։ ԺԲ Ա Թագ. Իա. 6 ։ ԺԳ Ել. ԻԹ. 32, 33 ; Ղև. Իդ. 9 ։ ԺԴ Մատ. Ժբ. 8 ։ — Մատ. Ժբ. 9 ; Ղու. Զ. 6 ։

Յամի Տեառն 31

* Ոմանք՝ ողջացաւ մէկալին պէս

ե Մատ. ժբ. 14։

զ Մատ. իբ. 16։

է Ղու. զ. 17։

ը Գլ. ա. 23, 24։ Ղու. դ. 42։

թ Մատ. ժդ. 33։ Գլ. ա. 1։

ժ Գլ. ա. 25, 34։ Մատ. ժբ. 16։

ժա Մատ. ժ. 1։ Ղու. զ. 12։ թ. 1։

ժբ Յոհ. ա. 42։

ժգ Գլ. զ. 31։

ժդ Յոհ. է. 5։ ժ. 20։

ժե Մատ. թ. 34։ ժ. 25։ Ղու. ժա. 15։ Յոհ. է. 20։ ը. 48, 52։ ժ. 20։

ժզ Մատ. ժբ. 25։

անոնց սրտերուն կուրութեանը հա-
մար տրտմած , ըսաւ այն մարդուն .
Ձեռքդ երկնցուր . ան ալ եր-
կընցուց , և անոր ձեռքը * ողջացաւ ։
6 ե Ու փարիսեցիները զ Հերովդէ-
սեաններուն հետ մէկտեղ շուտ մը
դուրս ելլելով , անոր դէմ խոր-
հուրդ կ'ընէին՝ թէ ինչպէս կոր-
սնցընեն անիկայ ։
7 Բայց Յիսուս իր աշակերտներովը
ծովեզերքը գնաց . և շատ բազ-
մութիւն անոր ետևէն գացին Գա-
8 լիլեայէն , ու է Հրէաստանէն , Եւ
Երուսաղեմէն , ու Եդովմէն և
Յորդանանու անդիի կողմէն , ու
անոնք որ Տիւրոսի ու Սիդոնի շըր-
ջակայ տեղերէն էին , շատ բազմու-
թիւն երբոր լսեցին ինչ որ կ'ընէր .
9 իրեն եկան ։ Եւ իր աշակերտնե-
րուն ըսաւ որ նաւակ մը պատրաստ
կենայ իրեն համար՝ ժողովուրդին
բազմութեանը պատճառաւ , որ
10 զինքը չնեղեն ։ Քանզի շատերը
բժշկեց , անանկ որ ցաւ ունեցող-
ները վրան կը դիզուէին որ իրեն
11 դպչին ։ ը Եւ պիղծ ոգիները երբոր
զինքը կը տեսնէին , կ'իյնային իր
առջևը , կը կանչուըռտէին ու կ'ը-
12 սէին . Դուն ես Աստուծոյ Որդին .
և թ ինքը սաստիկ կը յանդիմանէր
զանոնք , որ զինքը չյայտնեն ։
13 ժ Եւ լեռը ելլելով , իր ուզածնե-
րը իրեն կանչեց . ու գացին անոր
14 քովը ։ Եւ տասուերկու հոգի ո-
րոշեց , որ իր հետը ըլլան . և որ
15 անոնք խրկէ քարոզել , Ու իշխա-
նութիւն ունենալ ցաւերը բժշկե-
16 լու , և դևերը հանելու ։ Ու Սի-
17 մոնին ժբ անունը Պետրոս դրաւ . Եւ
Զեբեդեան Յակոբոսին՝ ու Յա-
կոբոսին եղբօրը Յովհաննէսին՝ ա-
նոնց անունները Բաներեգէս դրաւ ,
18 որ ըսել է՝ Որդիք որոտման . Եւ
Անդրէասը , ու Փիլիպպոսը , և
Բարթուղիմէոսը , ու Մատթէոսը ,
և Թովմասը , ու Ալփէոսեան Յա-
կոբոսը , և Թադէոսը , ու Սիմոն
19 Կանանացին . Եւ Յուդա Իսկա-
րիովտացին , որ նաև մատնեց զա-
նիկայ ։
20 Տուն մը եկան , և նորէն ժողո-
վուրդը ժողվուեցաւ , ժգ անանկ որ
հաց ուտելու ալ ժամանակ չկրցան
21 գտնել ։ Ու երբոր իրենները լսե-
ցին , ելան որ զինքը բռնեն , ժդ քան-
22 զի կ'ըսէին թէ խելըռած է ։ Եւ
այն դպիրները որ Երուսաղեմէն ի-
ջեր էին , կ'ըսէին թէ , ժե Աստոր
ներսի դին Բէեղզեբուղ կայ , և
դևերուն իշխանովը դևերը կը հա-
23 նէ ։ ժզ Եւ իրեն կանչելով զանոնք ,
առակներով կ'ըսէր անոնց . Ի՞նչ-
պէս կրնայ Սատանան Սատանայ
24 հանել ։ Ու թէ որ մէկ թագա-
ւորութիւն մը իրեն դէմ բաժնուի ,
այն թագաւորութիւնը չկրնար կե-
25 նալ ։ Եւ թէ որ տուն մը իրեն
դէմ բաժնուի , այն տունը չկրնար
26 կենալ , Ու թէ որ Սատանան իրեն
դէմ ելաւ՝ ու բաժնուած է , անի-
կայ չկրնար կենալ , հապա անոր
27 վերջը հասած է ։ ժէ Մէկը չկրնար
զօրաւոր մարդու մը տունը մտնե-
լով՝ անոր կարասիները յափշտա-
կել , թէ որ առաջ այն զօրաւոր
մարդը չկապէ , ու ետքը անոր
28 տունը կողոպտէ ։ ժը Ճշմարիտ կ'ը-
սեմ ձեզի որ , Ամէն մեղքերը պիտի
ներուին մարդոց որդիներուն , և
հայհոյութիւնները՝ որչափ որ հայ-
29 հոյեն . Բայց ով որ Հոգւոյն Սրբոյ
դէմ հայհոյէ , յաւիտեան թողու-
թիւն պիտի չունենայ . հապա
յաւիտենական դատաստանի պար-
30 տաւոր պիտի ըլլայ ։ Վասն զի
կ'ըսէին թէ . Պիղծ ոգի կայ անոր
ներսի դին ։
31 ի Ետքը անոր մայրը ու եղբայր-
ները եկան , և դուրսը կայնելով՝
մարդ խրկեցին ու կը կանչէին զա-
32 նիկայ ։ Եւ ժողովուրդը անոր բո-
լորտիքը նստեր էր . ու իրեն ըսին
թէ , Ահա քու մայրդ ու եղբայր-
ներդ դուրսը կայներ են՝ և քեզ
33 կ'ուզեն ։ Եւ անիկայ պատասխան
տուաւ անոնց՝ ու ըսաւ . Ո՞վ է
34 իմ մայրս՝ կամ եղբայրներս ։ Ու
իր բոլորտիքը նստողներուն նայե-
լով՝ ըսաւ . Ահա իմ մայրս ու
35 իմ եղբայրներս . Վասն զի ով որ
Աստուծոյ կամքը կը կատարէ , ա-
նիկայ է իմ եղբայրս և քոյրս ու
մայրս ։

Յամի Տեառն 31

ժէ Ես. իթ. 24։ Մատ. ժբ. 29։

ժը Մատ. ժբ. 31։ Ղու. ժբ. 10։ ա Յոհ. ե. 16։

ի Մատ. ժբ. 46։ Ղու. ը. 19։

## ԳԼ. Դ.

1 Սերմանացանին առակը . 14 և այն առակին մեկնութիւնը ։ 21 Մենք պարտաւոր ենք մեր գիտութեան լոյսը ուրիշներուն ալ հաղորդելու ։ 26 Ծածուկ աճեցող սերմին , 30 և մանանեխի հատին առակը ։ 35 Քրիստոս կը հանդարտեցընէ ծովուն ալէկոծութիւնը ։

1 ա Դարձեալ սկսաւ սորվեցընել
ծովեզերքին վրայ . և շատ ժո-
ղովուրդ անոր քովը ժողվուեցաւ ,
անանկ որ՝ ինքը նաւը մտաւ , ու
նստաւ ծովուն վրայ . և բոլոր ժո-
ղովուրդը ցամաքը ծովուն եզերքն
2 էր ։ Եւ անոնց շատ բաներ կը
սորվեցընէր առակներով , բ ու կ'ը-
սէր անոնց իր վարդապետութեանը
3 մէջ . Լսեցէ՛ք՝ ահա սերմ ցանողը
4 ելաւ որ սերմ ցանէ ։ Ու երբոր
կը ցանէր , մէկ քանին ճամբուն
քովը ինկաւ , և թռչունները եկան
5 ու կերան զանիկայ ։ Եւ ուրիշը
ինկաւ ապառաժուտ տեղի վրայ ,
ուր որ շատ հող չկար . և շուտ
մը բուսաւ , հողը խորունկութիւն

ա Մատ. ժգ. 1։ Ղու. ը. 4։

բ Գլ. ժբ. 38։

Յամի Տեառն 31

6 չունենալուն համար։ Սակայն ա-
րեւուն ծագած ատենը՝ այրեցաւ,
ու արմատ չունենալուն համար
7 չորցաւ։ Եւ ուրիշը ինկաւ փու-
շերու մէջ, և փուշերը ելան՝ ու
խեղդեցին զանիկայ, ու պտուղ
8 չտուաւ։ Եւ ուրիշը ինկաւ աղէկ
հողի մէջ, ու պտուղ կու տար,
փ որ ելաւ ու մեծցաւ, և կը բերէր
մէկուն տեղը երեսուն, ու մէկուն
տեղը վաթսուն, և մէկուն տեղը
9 հարիւր։ Ու կ'ըսէր. Ան որ լը-
սելու ականջ ունի, թող լսէ։
10 ր Ու երբոր առանձին էր, իր քո-
վը եղողները՝ տասուերկուքին հետ
մէկտեղ՝ հարցուցին իրեն ան ա-
11 ռակը։ Եւ ըսաւ անոնց. Ձեզի
տրուած է գիտնալ Աստուծոյ
թագաւորութեանը խորհուրդը,
բայց ք անոնց՝ որ դուրսէն են, ամէն
12 բան առակներով կ'ըլլայ. ղ Որ
տեսնելով տեսնեն՝ ու չտեսնեն,
և լսելով լսեն՝ ու չիմանան. որ
չըլլայ թէ դարձի գան, և իրենց
13 մեղացը թողութիւն ըլլայ։ Ու
ըսաւ անոնց. Աս առակը չէ՞ք գի-
տեր. ուրեմն ի՞նչպէս պիտի գիտ-
14 նաք ամէն առակները։ ք Սերմ
15 ցանողը խօսքը կը ցանէ։ Եւ ճամ-
բուն քովինները անոնք են՝ որոնց
մէջ խօսքը կը ցանուի. ու երբոր
կը լսեն, շուտ մը Սատանան կու
գայ՝ և անոնց սրտերուն մէջ ցա-
16 նուած խօսքը կը հանէ։ Նոյնպէս
ալ ապառաժուտ տեղերու վրայ
ցանուածները անոնք են, որ երբոր
կը լսեն խօսքը՝ շուտ մը ուրախու-
17 թեամբ կ'ընդունին զանիկայ. Եւ
իրենց մէջը արմատ չունենալով՝
քիչ ժամանակ կը տեւեն... ետքը
երբոր նեղութիւն կամ հալածանք
ըլլայ խօսքին համար, շուտ մը կը
18 գայթակղին։ Եւ փուշերուն մէջ
ցանուածները անոնք են՝ որ երբ
19 խօսքը կը լսեն, Աշխարհիս զբաղ-
մունքները ը ու հարստութեան
խաբէութիւնները, և ուրիշ բա-
ներուն ցանկութիւնները մէջ մըտ-
նելով՝ խօսքը կը խեղդեն, ու կ'ըլ-
20 լայ անպտուղ։ Եւ աղէկ հողի
մէջ ցանուածները անոնք են, որ
խօսքը կը լսեն՝ և կ'ընդունին, ու
պտուղ կու տան՝ մէկուն տեղը ե-
րեսուն, և մէկուն տեղը վաթսուն,
ու մէկուն տեղը հարիւր։
21 բ Եւ ըսաւ անոնց. Միթէ ճրագը
գրուանին կամ մահիճին տակը
դրուելու համար կու գայ. չէ՞ որ
աշտանակին վրայ դրուելու հա-
22 մար։ ծ Ինչու որ ծածուկ բան մը
չկայ, որ պիտի չյայտնուի. և
գաղտուկ բան մը չէ եղած՝ որ
23 երեւան պիտի չելլէ։ ե Եթէ որ

փ Յովհ. ժե. 5։ Կող. ա. 6։
ր Մատ. ժգ. 10. Ղուկ. ը. 9, 10։
ք ա Կոր. ե. 12։ Կող. դ. 5։ ա Թես. դ. 12։ ա Տիմ. գ. 7։
ղ Ես. զ. 9։ Մատ. ժգ. 14։ Ղուկ. ը. 10։ Յովհ. ժբ. 40։ Գործ. իը. 26։ Հռովմ. ժա. 8։
ք Մատ. ժգ. 19։
ը ա Տիմ. զ. 9, 17։
բ Մատ. ե. 15։ Ղուկ. ը. 16։ ժա. 33։
ծ Մատ. ժ. 26։ Ղուկ. ժբ. 2։
ե Մատ. ժա. 15։ [illegible] 9։

Յամի Տեառն 31

մէկը լսելու ականջ ունի, թող
լսէ։
24 Եւ ըսաւ անոնց. Նայեցէք ինչ
կը լսէք. ւ Ինչ չափով որ դուք կը
չափէք, նոյն չափով պիտի չափուի
ձեզի. և ձեզի՝ որ կը լսէք, պիտի
25 աւելնայ։ Վասն զի ե ով որ ունի,
անոր պիտի տրուի. և ով որ չու-
նի, ունեցածն ալ անկէ պիտի
առնուի։
26 Եւ կ'ըսէր. ծ Աստուծոյ թագա-
ւորութիւնը ասանկ է, որպէս թէ
մէկ մարդ մը հողին մէջը սերմ
27 ձգէ, Ու քնանայ և արթըննայ գի-
շեր ու ցորեկ, և սերմը բուսնի
ու մեծնայ, — ինքը չգիտեր թէ
28 ինչպէս։ Քանզի հողը ինքիրմէն
պտուղ կու տայ. առաջ խոտը,
ետքը հասկը, անկէ ետեւ լեցուն
29 ցորենը հասկին մէջ։ Ու երբոր
պտուղը հասուննայ, շուտ մը
ի մանգաղը կը խրկէ, ինչու որ
հունձքի ատենը հասած է։
30 Եւ կ'ըսէր. Աստուծոյ թագա-
ւորութիւնը հ ի՞նչ բանի նմանցը-
նենք, կամ ի՞նչ առակով անիկայ
31 բաղդատենք։ Մանանեխի հատին
նման է, որ հողի մէջ ցանուած
ատենը՝ երկրի վրայ եղած սերմե-
32 րուն ամենէն պզտիկն է. Ու երբ-
որ ցանուի, կը բուսնի, և ամէն
խոտեղէններէն ալ մեծ կ'ըլլայ,
ու մեծ ճիւղեր կ'արձակէ, անանկ
որ երկնից թռչուններուն հերիք
կ'ըլլայ անոր շուքին տակը բնա-
կելու։
33 յ Եւ ասանկ շատ առակներով կը
խօսէր անոնց հետ խօսքը որչափ
34 որ կրնային մտիկ ընել. Ու առանց
առակի բան մը չէր խօսեր անոնց.
բայց առանձին իր աշակերտներուն
կը մեկնէր ամէնը։
35 ղ Եւ նոյն օրը երբոր իրիկուն
կ'ըլլար, ըսաւ անոնց. Եկէ՛ք ծովուն
36 մէկալ կողմը անցնինք։ Անոնք
ալ ժողովուրդը թող տալով՝ ա-
ռին զինքը ինչպէս որ էր նաւուն
մէջ. և ուրիշ նաւակներ ալ կա-
37 յին անոր հետ։ Ու հովի մեծ
փոթորիկ մը եղաւ, և ալիքները
նաւուն վրայ կու գային, անանկ
38 որ գրեթէ լեցուն էր։ Ու ինքը
նաւուն ետեւի կողմը բարձի վրայ
կը քնանար. արթընցուցին զանի-
կայ՝ և կ'ըսէին անոր. Վարդապետ՝
39 հոգդ չէ՞, որ կը կորսուինք։ Ու
ելլելով՝ սաստեց հովին, և ծովուն
ըսաւ. Դադարէ՛ լուռ կեցիր. ու
հովը դադարեցաւ, և մեծ խաղա-
40 ղութիւն եղաւ։ Ու ըսաւ անոնց.
Ինչո՞ւ ատանկ վախկոտ էք, ի՞նչ-
պէս կ'ըլլայ որ հաւատք չունիք։
Եւ անոնք խիստ վախցան, ու կ'ը-

ւ Մատ. է. 2։ Ղուկ. զ. 38։
ե Մատ. ժգ. 12։ իե. 29։ Ղուկ. ը. 18։ ժթ. 26։
ծ Մատ. ժգ. 24։
ի Յայտ. ժդ. 15։
հ Մատ. ժգ. 31։ Ղուկ. ժգ. 18։ Գործ. բ. 41։ դ. 4։ ե. 14։ ժթ. 20։
յ Մատ. ժգ. 34։ Յովհ. ժզ. 12։
ղ Մատ. ը. 18, 23։ Ղուկ. ը. 22։

Յամի Տեառն 31

սէին իրարու . Արդեօք ո՞վ է ասի-
կայ , որ հովը ու ծովը ասոր կը
հնազանդին ։

## ԳԼ. Ը

1 Քրիստոս լէգէոն ունեցող մարդը կը բժշկէ . 13 և անկէ ելլող դեւերը խոզերուն մէջ կը մտնեն ։ 25 Քրիստոս կը բժշկէ տեռատես կնիկը , 35 և Յայրոսի աղջիկը կը յարուցանէ ։

1 Ու եկան ծովուն միւս կողմը
2 *Գադարացւոց երկիրը ։ Ու
երբոր ինքը նաւէն ելաւ , գերեզ-
մաններէն ելած մարդ մը պատա-
հեցաւ իրեն , որ պիղծ ոգի ունէր .
3 Որ անոր բնակած տեղն ալ գերեզ-
մաններուն մէջն էր . ու շղթայով
ալ մէկը չէր կրնար զանիկայ կա-
4 պել . Որովհետեւ շատ անգամ
ոտնակապերով և շղթաներով կա-
պուեր էր , բայց անիկայ շղթաները
կտրեր , ու ոտնակապերը կոտրտեր
էր , և մէկը չէր կրնար զանիկայ
5 նուաճել . Եւ միշտ գիշեր ու ցո-
րեկ †գերեզմաններուն մէջ ու լեռ-
ներուն մէջ" կը կանչուըռտէր , ու
իր մարմինը քարերով կը ճեղքըռ-
6 տէր ։ Երբոր հեռուանց Յիսուսը
տեսաւ , վազեց ու երկրպագու-
7 թիւն ըրաւ անոր , Եւ մեծ ձայնով
մը աղաղակեց՝ ու ըսաւ . Դուն իմ
հետս ի՞նչ բան ունիս Յիսուս՝
Որդի Աստուծոյ բարձրելոյ . քեզ
Աստուծով կ'երդմնցընեմ , զիս մի՛
8 տանջեր ։ ( Քանզի կ'ըսէր անոր .
Պիղծ ոգի՛ ելի՛ր ատ մարդէն ։ )
9 Եւ անոր հարցուց թէ՝ Անունդ
ի՞նչ է . ու ըսաւ անոր . Իմ ա-
նունս Լէգէոն է , ինչու որ մենք
10 շատուոր ենք ։ Եւ շատ ‡կ'աղաչէին
անոր՝ որ զիրենք ան երկրէն դուրս
11 չհրկէ ։ Եւ հոն լեռանը մօտ խո-
զերու մեծ երամակ մը կար՝ որ կ'ա-
12 րածուէին ։ Ու բոլոր դեւերը ա-
ղաչեցին անոր՝ ու ըսին . Մեզ
խոզերուն ղրկէ , որ անոնց մէջը
13 մտնենք ։ Եւ Յիսուս շուտ մը
հրաման տուաւ անոնց . ու երբոր
պիղծ ոգիները ելան՝ խոզերուն մէջը
մտան . և երամակը զահավէժ տե-
ղէն ծովը վազեց , ( երկու հազարի
չափ կային , ) ու ծովուն մէջը խեղ-
14 դուեցան ։ Եւ խոզարածները փա-
խան , ու պատմեցին քաղաքը ու
ագարակները . և մարդիկ ելան տես-
նելու՝ թէ ինչ բան է որ եղաւ ։
15 Ու եկան Յիսուսին , և տեսան դի-
ւահարը՝ որ լէգէոն ունէր , որ հա-
գուած ու խելքը վրան եկած Նրս-
16 տեր էր , ու վախցան ։ Եւ անոնք որ
տեսեր էին , պատմեցին անոնց՝ թէ
ինչ եղաւ դիւահարին . նաեւ խո-
17 զերուն վրայով ։ ՖԵւ սկսան ա-
ղաչել անոր , որ իրենց սահմաննե-
18 րէն երթայ ։ Ու երբոր անիկայ
նաւը մտաւ , ՟դիւահարը կ'աղաչէր
19 անոր՝ որ հետը ըլլայ ։ Եւ Յի-
սուս թող չտուաւ անոր . հապա
ըսաւ անոր . Գնա՛ քու տունդ քու
ընտանիներուդ , ու պատմէ՛ անոնց
ինչ որ Տէրը քեզի ըրաւ , և ողոր-
20 մեցաւ քեզի ։ Ան ալ գնաց , և
սկսաւ Դեկապոլիսի մէջ քարոզել
ինչ որ Յիսուս իրեն ըրաւ . և ա-
մէնը կը զարմանային ։
21 ՟Ու երբոր Յիսուս նաւով նորէն
ծովուն միւս կողմը անցաւ , շատ
բազմութիւն ժողվուեցաւ անոր
22 քովը , և ինքը ծովեզերքն էր ։ ՟Եւ
ահա՛ ժողովրդապետներուն մէկը
կու գար , որուն անունը Յայրոս էր .
ու երբոր տեսաւ զանիկայ , անոր
23 ոտքը ինկաւ . Եւ շատ կ'աղաչէր
անոր՝ ու կ'ըսէր թէ , Իմ աղջիկս
մեռնելու մօտ է , որ գաս անոր վը-
րայ ձեռք դնես , որպէս զի ազատի ,
24 ու ապրի ։ Եւ գնաց անոր
հետ . ու շատ բազմութիւն իր
ետեւէն կ'երթային՝ ու կը նեղէին
զինքը ։
25 Եւ կնիկ մը՝ Նոր տասուերկու
տարի արիւնի տեռատեսութեան
26 մէջ էր , Ու խիստ վշտացած էր շատ
բժիշկներէն , և իր բոլոր ունեցա-
ծը վատներ էր , ու օգուտ մը չէր
դտեր , հապա եւս առաւել զայրա-
27 ցեր էր , Երբոր Յիսուսին վրայով
լսեց , ետեւէն եկաւ բազմութեանը
մէջ , ու անոր հանդերձին դպաւ .
28 Քանզի կ'ըսէր , թէ որ միայն անոր
հանդերձներուն դպչիմ , պիտի
29 բժշկուիմ ։ Եւ շուտ մը իր ա-
րիւնին աղբիւրը ցամքեցաւ . ու իր
մարմնին մէջ իմացաւ՝ թէ տան-
30 ջանքէն բժշկուեցաւ ։ Եւ Յիսուս
շուտ մը գիտնալով իր անձին մէջ
ան ՟զօրութիւնը՝ որ իրմէն ելաւ ,
դարձաւ բազմութեանը մէջ՝ ու ը-
սաւ . Ո՞վ դպաւ իմ հանդերձ-
31 ներուս ։ Եւ իր աշակերտները
ըսին իրեն . Կը տեսնես որ բազ-
մութիւնը քեզ կը նեղէ , ու կ'ը-
32 սե՞ս թէ՝ Ո՛վ ինծի դպաւ ։ Եւ
իր բոլորտիքը կը նայէր որ աս բա-
33 նը ընողը տեսնէ ։ Ու կնիկը վախ-
ցաւ՝ ու դողաց , ինչու որ գիտէր
թէ իրեն ինչ եղաւ . և եկաւ՝ անոր
առջեւը ինկաւ , ու բոլոր ժողովրդեան առջեւ
34 յայտնեց ինչու համար դպաւ անոր ։ Եւ
Յիսուս ըսաւ անոր . Աղջի՛կ՝ քու
հաւատքդ քեզ բժշկեց . գնա՛ խա-
ղաղութեամբ , ու բժշկուած եղիր
քու տանջանքէդ ։
35 ՟Երբոր ինքը դեռ կը խօսէր ,
ժողովրդապետին տունէն մարդիկ ե-
կան՝ ու ըսին թէ , Աղջիկդ մեռաւ ,
ալ ինչո՞ւ վարդապետը կը յոգնե-
36 ցընես ։ Իսկ Յիսուս ըսուած խօս-

Margin notes: *Մատթ. Ը. 28 ։ Մարկ. Ե. 1 ։ Գերգեսացւոց — † Ոմանք՝ լեռներուն մէջ ու գերեզմաններուն մէջ — ‡ Կամ կ'աղաչէր — ՖՄատթ. Ը. 34 ։ Գործ. ԺԶ. 39 ։ — Մարկ. Ե. 18 ։ — Մատթ. Թ. 1 ։ Մարկ. Ե. 21 ։ — Մատթ. Թ. 18 ։ Մարկ. Ե. 22 ։ — Ղեւտ. ԺԵ. 25 ։ Մատթ. Թ. 20 ։ — Ղուկ. Զ. 19 ։ — Մատթ. Թ. 22 ։ Ղուկ. Է. 50 ։ Գործ. ԺԴ. 9 ։ — Մարկ. Ե. 35 ։

Յամ Տեառն 31

ժ Յոհ . ժա . 11 ։
է Գոր . Թ . 40 ։
ը Մատ . ը . 4 ։ Թ . 30 ։ ժբ . 16 ։ ժէ . 9 ։ Գլ . գ . 12 ։ Ղու . ե . 14 ։

քը լսածին պէս՝ ժողովրդապետին
ըսաւ . Մի՛ վախնար , միայն թէ
37 հաւատա՛ ։ Եւ մէկը թող չտուաւ
իր հետը երթալու , բայց միայն
Պետրոսը ու Յակոբոսը և Յակո-
38 բոսին եղբայրը Յովհաննէսը ։ Ու
ժողովրդապետին տունը գալով՝
տեսաւ աղմուկ և սաստիկ լացողներ
39 ու աղաղակողներ ։ Եւ ներս մտնե-
լով՝ ըսաւ անոնց . Ինչո՞ւ խռովեր
էք՝ ու կու լաք . մանուկը մեռած
40 չէ՛ , հապա [ժ] կը քնանայ ։ Եւ ծաղր
կ՚ընէին անիկայ . [է] բայց ինքը ամէնը
դուրս հանելով՝ իր հետը առաւ
մանուկին հայրը ու մայրը՝ և անոնք
որ իր հետն էին , ու մտաւ հոն՝ ուր
41 որ մանուկը պառկած էր ։ Եւ
մանուկին ձեռքէն բռնելով՝ ըսաւ
անոր . Տալիթա՛ կումի , որ կը
թարգմանուի , Աղջի՛կ ( քեզի կ՚ը-
42 սեմ , ) ելի՛ր ։ Եւ իսկոյն աղջիկը
ոտք ելաւ , ու կը քալէր , ինչու որ
տասներկու տարեկան էր . ու մեծ
43 ապշութեամբ ապշեցան ։ Եւ
[ը] սաստիկ պատուէր տուաւ անոնց՝
որ մէկը չգիտնայ աս բանը . ու
ըսաւ որ անոր ուտելիք տան ։

## ԳԼ . Զ

1 Քրիստոս անարգութիւն կը կրէ իր քաղաքակիցներէն . 7 տասներկու աշակերտներուն իշխանութիւն կու տայ պիղծ ոգիները հանելու ։ 14 Զանազան կարծիքներ Քրիստոսի վրայով ։ 27 Յովհաննէս մկրտիչ կը գլխատուի , 29 և կը թաղուի ։ 30 Առաքեալները իրենց քարոզութենէն Յիսուսի կը դառնան ։ 34 Հինգ հացին ու երկու ձուկին հրաշքը ։ 48 Քրիստոս ծովուն վրայ կը քալէ . 53 և ամէն իրեն դպչող ցաւագարները կը բժշկէ ։

ա Մատ . ժգ . 54 ։ Ղու . դ . 16 ։
բ Յոհ . զ . 42 ։
գ Մատ . ժբ . 46 ։ Գաղ . ա . 19 ։
դ Մատ . ժա . 6 ։
ե Մատ . ժգ . 57 ։ Յոհ . դ . 44 ։
զ Տե՛ս Ծն . ժթ . 22 ։ լբ . 25 ։ Մատ . ժգ . 58 ։ Գլ . Թ . 22 ։
է Եսա . ծթ . 16 ։
ը Մատ . Թ . 35 ։ Ղու . ժգ . 22 ։

1 Եւ [ա] անկէ ելլելով՝ եկաւ իր երկի-
րը , ու անոր աշակերտները իր
2 ետևէն գացին ։ Եւ շաբաթ օրը
հասնելուն՝ սկսաւ ժողովարանին
մէջ սորվեցընել . ու շատերը լսե-
լով՝ կը զարմանային ու կ՚ըսէին .
[բ] Ասիկայ ո՞ւսկից ունի աս բաները ,
կամ աս ի՞նչ իմաստութիւն է որ
ասոր տրուած է , որ ասանկ հրաշք-
3 ներ կ՚ըլլան ասոր ձեռքովը ։ Ասի-
կայ հիւսը չէ՞ , Մարիամին որդին ,
և [գ] Յակոբոսին ու Յովսեսին և
Յուդային ու Սիմոնին եղբայրը . ու
ասոր քոյրերը հոս մեր քովը չե՞ն .
և [դ] անոր վրայով կը գայթակղէ-
4 ին ։ Բայց Յիսուս ըսաւ անոնց .
[ե] Մարգարէ մը անպատիւ չէ՝ բայց
միայն իր երկրին մէջ , ու իր ազ-
գականներուն , և իր տանը մէջ ։
5 [զ] Ու չէր կրնար հոն մէկ հրաշք մըն
ալ ընել , միայն թէ քանի մը հի-
ւանդներու վրայ ձեռք դրաւ , ու
6 բժշկեց զանոնք ։ Եւ [է] անոնց ան-
հաւատութեանը վրայ կը զարմա-
նար . [ը] Ու շրջակայ գեղերը պտը-
տելով՝ կը սորվեցընէր ։

7 [թ] Եւ իրեն կանչեց տասներկու-
քը . ու սկսաւ երկու երկու խրկել
զանոնք , ու անոնց իշխանութիւն
8 տուաւ պիղծ ոգիներուն վրայ ։ Եւ
պատուիրեց անոնց՝ որ ճամբու հա-
մար բան մը չառնեն , բայց միայն
գաւազան մը . ո՛չ տոպրակ , ո՛չ
հաց , ո՛չ ստակ գօտիներնուն մէջ .
9 [ժ] Հապա հողաթափ հագնին . և
Կրկին հանդերձ մի՛ հագնիք՝ ըսաւ ։
10 [ժա] Ու ըսաւ անոնց . Ո՛ր տուն որ
մտնէք , հո՛ն կեցէք մինչև որ անկէ
11 ելլէք ։ [ժբ] Եւ անոնք որ ձեզ չեն
ընդունիր , ու ձեզի մտիկ չեն ըներ ,
երբոր անկէ կ՚ելլէք , [ժգ] ոտքերնուդ
տակի փոշին թօթվեցէ՛ք՝ անոնց
վկայութիւն ըլլալու համար ։
* Ճշմարիտ կ՚ըսեմ ձեզի . Սոդոմա-
ցւոց ու Գոմորացւոց աւելի դիւրին
պիտի ըլլայ դատաստանին օրը՝
քան թէ ան քաղաքին " ։
12 Եւ անոնք ելլելով՝ կը քարոզէին ,
13 որ մարդիկ ապաշխարեն ։ Եւ շատ
դևեր կը հանէին , [ժե] ու շատ հի-
ւանդներ եղով կ՚օծէին՝ ու կը բը-
ժշկէին զանոնք ։
14 [ժզ] Եւ Հերովդէս թագաւորը լսեց .
(ինչու որ անոր անունը յայտնի
եղաւ , ) ու կ՚ըսէր , Թէ Յովհան-
նէս մկրտիչը մեռելներէն յարու-
թիւն առեր է , ու անոր համար
15 հրաշքներ կ՚ըլլան անով ։ [ժէ] Ուրիշ-
ները կ՚ըսէին՝ Թէ Եղիան է . ու-
րիշներն ալ կ՚ըսէին Թէ՝ Մարգա-
րէ մըն է , կամ մարգարէից մէկուն
16 պէս ։ Բայց [ժը] երբոր Հերովդէս լը-
սեց , ըսաւ . Ասիկայ Յովհաննէսն
է՝ որուն գլուխը ես կտրեցի . մե-
ռելներէն յարութիւն առեր է ։
17 Քանզի Հերովդէս ինքը մարդ
խրկեց՝ Յովհաննէսը բռնեց , ու
կապեց բանտը դրաւ՝ իր եղբօրը
Փիլիպպոսին կնկանը Հերովդիային
համար , ինչու որ իրեն կնիկ առեր
18 էր զանիկայ ։ Վասն զի Յովհան-
նէս Հերովդէսին կ՚ըսէր . [ժթ] Քեզի
օրինաւոր չէ՛ քու եղբօրդ կնիկը
19 ունենալ ։ Եւ Հերովդիա ոխ ու-
նէր անոր դէմ , ու կ՚ուզէր անիկայ
20 մեռցընել , ու չէր կրնար . Ինչու որ
Հերովդէս [ի] կը վախնար Յովհան-
նէսէն , գիտնալով Թէ անիկայ
արդար և սուրբ մարդ մըն է . և
անոր բերանը կը նայէր , ու անկէ
լսելով՝ շատ բան կ՚ընէր , և քաղց-
21 րութեամբ անոր մտիկ կ՚ընէր ։ Ու
[իա] երբոր դիպուկ օր մը եղաւ , որ Հե-
րովդէս [իբ] իր ծննդեան օրը ընթրիք
կ՚ընէր իր մեծամեծներուն և հա-
զարապետներուն՝ ու Գալիլեայի ե-
22 րևելիներուն . Եւ Հերովդիային
աղջիկը հանդէպ ներսը մտնելով
խաղաց , ու հաճելի եղաւ Հերով-

Յամ Տեառն 31

թ Մատ . ժ . 1 ։ Գլ . գ . 13 . 14 ։ Ղու . Թ . 1 ։
ժ Գոր . ժբ . 8 ։
ժա Մատ . ժ . 11 ։ Ղու . Թ . 4 ։ ժ . 7 , 8 ։
ժբ Մատ . ժ . 14 ։ Ղու . ժ . 10 ։
ժգ Գոր . ժգ . 51 ։ ժը . 6 ։
* Ոմանք չունին ։
ժե Յակ . ե . 14 ։
ժզ Մատ . ժդ . 1 ։ Ղու . Թ . 7 ։
ժէ Մատ . ժզ . 14 ։ Գլ . ը . 28 ։
ժը Մատ . ժդ . 2 ։ Ղու . գ . 19 ։
Յա . Տ . 30
ժթ Ղև . ժը . 16 ։ ի . 21 ։
ի Մատ . ժդ . 5 ։ իա . 26 ։
Յա . Տ . 32
իա Մատ . ժդ . 6 ։
իբ Ծն . խ . 20 ։

Յամի Տեառն 32

դեսին՝ և իր հետը նստողներուն .
Թագաւորը ըսաւ աղջկանը . Խնդրէ
ինծմէ ինչ որ կ'ուզես , ու
23 պիտի տամ քեզի ։ Եւ անոր եր-
դում ըրաւ ըսելով . Ինչ որ դուն
ինծմէ խնդրես , պիտի տամ քեզի ,
մինչև թագաւորութեանս կէսը ։
24 Եւ անիկայ դուրս ելլելով՝ իր մօրը
ըսաւ . Ի՞նչ ուզեմ . ան ալ ը-
սաւ . Յովհաննէս մկրտչին գլու-
25 խը ։ Եւ շուտ մը արտորալով
թագաւորին քովը մտաւ՝ ու խնդ-
րեց ըսելով . Կ'ուզեմ որ շուտով
սկուտեղի մը վրայ Յովհաննէս մը-
26 կրտչին գլուխը տաս ինծի ։ Եւ
թագաւորը խիստ տրտմեցաւ .
բայց երդումներուն համար՝ ու իր
հետը նստողներուն համար՝ չուզեց
27 որ անոր խնդիրքը մերժէ ։ Եւ թա-
գաւորը իսկոյն դահիճ խրկեց , ու
հրաման ըրաւ անոր գլուխը բերե-
լու . ան ալ գնաց բանտին մէջ
28 գլխատեց զանիկայ . Եւ սկուտե-
ղով մը բերաւ անոր գլուխը՝ ու
տուաւ աղջկանը , և աղջիկը զանի-
29 կայ իր մօրը տուաւ ։ Եւ անոր ա-
շակերտները լսելով , եկան անոր
մարմինը վերցուցին , ու գերեզմանի
մէջ դրին ։
30 Եւ առաքեալները Յիսուսին
քովը ժողվուեցան , ու պատմեցին
անոր՝ ամէն ինչ որ ըրին՝ և ինչ
31 որ սորվեցուցին ։ Եւ անիկայ ը-
սաւ անոնց . Եկէք դուք առանձին
անապատ տեղ մը , և քիչ մը
հանգչեցէք . քանզի շատերը
կային՝ որ կու գային ու կ'երթա-
յին . և հաց ուտելու ալ ժամանակ
32 չէին ունենար ։ Եւ նաւով անա-
33 պատ տեղ մը գացին առանձին ։ Ու
ժողովուրդները տեսան զանոնք որ
կ'երթային , և շատերը զանիկայ
ճանչցան , ու ոտքով բոլոր քա-
ղաքներէն հոն կը վազէին , և ա-
նոնցմէ առաջ հասնելով՝ անոր քո-
34 վը ժողվուեցան ։ Ու Յիսուս երբ-
որ դուրս ելաւ , շատ ժողովուրդ
տեսնելով՝ խղճաց անոնց վրայ .
ինչու որ հովիւ չունեցող ոչխար-
ներու պէս էին . և սկսաւ շատ
բաներ սորվեցընել անոնց ։
35 Ու երբոր ժամանակը շատ ու-
շացաւ , իր աշակերտները իրեն
եկան՝ ու ըսին . Հոս անապատ
տեղ մըն է , ու ժամանակը ու-
36 շացած է , Արձակէ ժողովուրդները
որ երթան բոլորտիքի ագարակ-
ները ու գեղերը՝ ու իրենց հաց
գնեն , ինչու որ ուտելու բան
37 մը չունին ։ Բայց անիկայ պա-
տասխան տուաւ՝ ու ըսաւ անոնց .
Դո՛ւք տուէք ատոնց որ ուտեն ։
Եւ ըսին իրեն . Երթանք երկու
հարիւր դահեկանի հաց գնե՞նք՝
38 և տանք ատոնց որ ուտեն ։ Ըսաւ
անոնց . Քանի՞ նկանակ ունիք ,
գացէ՛ք նայեցէ՛ք . ու երբոր գիտ-
ցան՝ ըսին . Հինգ , ու երկու
39 ձուկ ։ Եւ հրաման ըրաւ անոնց՝
որ կանանչ խոտին վրայ դունդ
40 դունդ նստին ։ Եւ դաս դաս
նստան՝ հարիւրական ու յիսունա-
41 կան ։ Եւ հինգ նկանակը ու երկու
ձուկը առաւ՝ ու դէպ 'ի երկինքը
նայելով , օրհնեց . և մանրեց
նկանակները՝ ու տուաւ իր աշա-
կերտներուն , որ անոնց առջևը
դնեն . ու երկու ձուկը ամենուն
42 ալ բաժնեց ։ Եւ ամէնքը կերան ու
43 կշտացան . Եւ տասներկու կողով
լեցուն՝ կտորուանքները վերցու-
44 ցին , և ձուկերէն ալ ։ Եւ ան
հացերէն ուտողները հինգ հազարի
չափ էրիկ մարդիկ էին ։
45 Եւ շուտ մը իր աշակերտները
արտորցուց որ նաւը մտնեն , և իրմէ
առաջ մէկալ կողմը Բեթսայիդա
անցնին , մինչև որ ինքը ժողովուր-
46 դը արձակէ ։ Եւ անոնցմէ զա-
տուելով՝ լեռը ելաւ աղօթք ընե-
47 լու ։ Ու երբոր իրիկուն եղաւ ,
նաւը ծովուն մէջտեղն էր , ու ինքը
48 մինակ ցամաքն էր ։ Եւ տեսաւ
անոնք որ կը տագնապէին նաւը
թի քաշելու ատեններն , ինչու որ
հովը իրենց դէմ էր . և գիշերուան
չորրորդ պահուն ատենները՝ ծովուն
վրայ քալելով կու գայ անոնց , ու
49 կ'ուզէր անոնցմէ անցնիլ ։ Ա-
նոնք երբոր տեսան որ ծովուն վրայ
կը քալէր , կարծեցին թէ աչքի
երևոյթ բան մըն է , ու կանչուռ-
50 տեցին . Քանզի ամէնքն ալ զանի-
կայ տեսան , ու խռովեցան . և
ինքը շուտ մը խօսեցաւ անոնց հետ՝
ու ըսաւ անոնց . Քա՛ջ եղէք՝ ես
51 եմ , մի՛ վախնաք ։ Եւ նաւը ե-
լաւ անոնց քովը , ու հովը դադա-
րեցաւ . և անոնք մտքերնուն մէջ
չափէ դուրս ապշած էին՝ ու կը
52 զարմանային ։ Վասն զի հացին
վրայ եղած հրաշքը չիմացան . ինչու
որ սիրտերնին թմրած էր ։
53 Ու մէկալ կողմը անցնելով ,
Գեննեսարեթի երկիրը հասան , և
54 նաւը տեղաւորեցին ։ Ու երբոր
նաւէն ելան ; ան տեղի մարդիկը իս-
55 կոյն ճանչցան զանիկայ . Եւ ասդին
անդին վազելով բոլոր շրջակայ
տեղուանքը , սկսան մահիճներով
հիւանդները բերել՝ ուր որ կը լը-
56 սէին թէ հոն է ։ Եւ ուր որ կը
մտնէր՝ գեղերը կամ քաղաքները
կամ ագարակները , հրապարակնե-
րուն մէջ կը դնէին հիւանդները ,
ու կ'աղաչէին իրեն՝ որ գոնէ իր

Margin references (left): Եսթ. ե. 3. 6 ։ է. 2 ։ — Մատ. ժդ. 9 ։ — Ղու. թ. 10 ։ — Մատ. ժդ. 13 ։ — Գլ. գ. 20 ։ — Մատ. ժդ. 13 ։ — Մատ. թ. 36 ։ ժդ. 14 ։ — Ղու. թ. 11 ։ — Մատ. ժդ. 15 ։ Ղու. թ. 12 ։ — Թու. ժա. 13 , 22 ։ դ Թագ. դ. 43 ։

Յամի Տեառն 32

Margin references (right): Մատ. ժդ. 17 ։ Ղու. թ. 13 ։ Յով. զ. 9 ։ Տե՛ս Մատ. ժե. 34 ։ Գլ. ը. 5 ։ — ա Թագ. թ. 13 ։ Մատ. իզ. 26 ։ — Մատ. ժդ. 22 ։ Յով. զ. 17 ։ — Մատ. ժդ. 23 ։ Յով. զ. 16 . 17 ։ — Տե՛ս Ղու. իդ. 28 ։ — Գլ. ը. 17 . 18 ։ — Գլ. գ. 5 ։ ժզ. 14 ։ — Մատ. ժդ. 34 ։ — Մատ. թ. 20 ։ Գլ. ե. 27 . 28 ։ Գոր. ժթ. 12 ։

Ցամ Տեառն 32

հանդերձին քղանցքին դպչին . և
որոնք որ դպան , բժշկուեցան ։

## ԳԼ . Է

1 Փարիսեցիք կը մեղադրեն Քրիստոսի աշակերտները՝ անլուայ ձեռքով հաց ուտելնուն համար ։ 6 Իսկ ինքը կ'ապացուցանէ թէ անոնք մարդոց աւանդութիւնները բռնելով՝ Աստուծոյ պատուիրանքը կ'անարգեն . 14 և թէ կերակուրը մարդը չպղծեր ։ 24 Փիւնիկ Ասորի կնկանը աղջիկը պիղծ ոգիէ մը կ'ազատէ , 31 և խուլ ու դժուարախօս մարդ մը կը բժշկէ ։

ա Մատ. ժե. 1 .
1 Եւ ա իր քովը ժողվուեցան փարի-
սեցիները , ու դպիրներէն ո-
մանք՝ որ Երուսաղեմէն եկած էին ։
2 Ու երբոր տեսան որ անոր աշա-
կերտներէն ոմանք պիղծ՝ այսինքն
անլուայ ձեռքերով հաց կ'ուտէին ,
3 մեղադրեցին ։ Ինչու որ փարի-
սեցիները ու բոլոր Հրէաները մին-
չև որ աղէկ մը ձեռքերնին չլուան ,
հաց չեն ուտեր . քանզի ծերերուն
4 աւանդութիւնը կը բռնեն . Եւ
շուկայէն եկած ատենին՝ թէ որ չը-
լուացուին , չեն ուտեր . և ուրիշ
շատ բաներ կայ՝ որ ընդունած են
ու կը բռնեն , այսինքն գաւաթնե-
րու և փարչերու ու պղնձէ աման-
ներու և անկողիններու լուացմունք-
բ Մատ. ժե. 2 .
5 ներ ։ բ Ան ատենը փարիսեցիները
ու դպիրները հարցուցին անոր
թէ , Ինչո՞ւ քու աշակերտներդ ծե-
րերուն աւանդութեանը պէս չեն
երթար , հապա անլուայ ձեռքերով
6 հաց կ'ուտեն ։ Ան ալ պատասխան
տուաւ ու ըսաւ անոնց . Աղէկ
մարգարէութիւն ըրաւ Եսայի՝ ձեզի
կեղծաւորներուդ համար , ինչպէս
գ Ես. իթ. 13 . Մատ. ժե. 8
որ գրուած է . գ Աս ժողովուրդը
միայն շրթունքներովը զիս կը պա-
տուէ ,, բայց իրենց սիրտը հեռա-
7 ցած զատուած է ինծմէ . Ու պա-
րապ տեղը զիս կը պաշտեն , մարդոց
պատուիրած բաները իբրև վարդա-
8 պետութիւն սորվեցընելով ։ Վասն
զի Աստուծոյ պատուիրանքը թող
տալով՝ մարդոց աւանդութիւնը կը
բռնէք , այսինքն՝ փարչերու և գա-
ւաթներու լուացմունքներ . և ա-
սոնց նման շատ ուրիշ բաներ կ'ը-
9 նէք ։ Ու ըսաւ անոնց . Աղէկ
կ'անարգէք Աստուծոյ պատուի-
րանքը , որ ձեր աւանդութիւնը
10 պահէք ։ Քանզի Մովսէս ըսաւ .
դ Ել. ի. 12 . Օր. ե. 16 . Մատ. ժե. 4 .
դ Քու հայրդ ու մայրդ պատուէ .
ե Ել. իա. 17 . Ղև. ի. 9 . Առակ. ի. 20 .
և ե Ո՛վ որ իր հայրը կամ մայրը ա-
11 նիծէ , մահով թող մեռնի ։ Բայց
դուք կ'ըսէք . Թէ որ մէկը իր հօրը
կամ մօրը ըսէ , Ան բանը որ ինծմէ
պիտի շահիս , Աստուծոյ տուա-
ծ կորբան է , (որ ըսել է՝ ընծայ ,)
զ Մատ. ժե. 5 . իգ. 18 .
12 անոր ըլլայ անիկայ . Եւ ալ թող
չէք տար անոր բան մը ընել իր
13 հօրը կամ իր մօրը ։ Ու Աստուծոյ
խօսքը կը խափանէք ձեր աւան-
դութիւնովը , որ կ'աւանդէք . և
ասոր նման շատ ուրիշ բաներ կ'ը-
նէք ։
է Մատ. ժե. 10 .
14 է Եւ բոլոր ժողովուրդը իրեն
կանչելով՝ ըսաւ անոնց . Լսեցէք
15 ինծի ամէնքդ՝ ու հասկըցէք ։ Բան
մը չկայ որ դուրսէն մարդուն ներսը
մտնէ , ու կարող ըլլայ զանիկայ
պղծելու . հապա ան բաները որ
անկէ կ'ելլեն , անոնք են որ մարդը
ը Մատ. ժա. 15 .
16 կը պղծեն ։ ը Ո՛վ որ լսելու ականջ
ունի , թող լսէ՛ ։
թ Մատ. ժե. 15 .
17 թ Ու երբոր ան բազմութենէն զա-
տուելով՝ տուն մտաւ , իր աշա-
կերտները հարցուցին իրեն ան ա-
18 ռակին համար ։ Ու ըսաւ անոնց .
Դո՞ւք ալ ատանկ անմիտ էք . չէ՞ք
հասկընար թէ ամէն ինչ որ դուր-
սէն մարդուն ներսի դին կը մտնէ ,
19 չկրնար անիկայ պղծել . Վասն զի
չէ թէ անոր սրտին մէջը կը մտնէ ,
հապա փորը , և արտաքնոցը կ'ել-
լէ , ու բոլոր կերածները կը մաք-
20 րէ ։ Եւ կ'ըսէր թէ՝ Ինչ որ կ'ելլէ
մարդուն ներսէն , անիկայ կը պղծէ
ժ Ծն. զ. 5 . ը. 21 . Մատ. ժե. 19 .
21 մարդը ։ ժ Ինչու որ ներսէն մարդոց
սրտէն կ'ելլեն չար խորհուրդները .
շնութիւններ , պոռնկութիւններ ,
22 Սպանութիւններ , գողութիւններ ,
ագահութիւններ , չարութիւններ ,
նենգութիւն , գիճութիւն , չար
աչք , հայհոյութիւն , ամբարտա-
23 ւանութիւն , անզգամութիւն ։ Աս
բոլոր չար բաները ներսէն կ'ելլեն ,
ու կը պղծեն մարդը ։
ի Մատ. ժե. 21 .
24 ի Եւ անկէ ելլելով՝ Տիւրոսի ու
Սիդոնի սահմանները գնաց . և
տուն մը մտնելով՝ չէր ուզեր որ
մէկուն յայտնուի , բայց չկրցաւ
25 ծածկուիլ . Քանզի կնիկ մը՝ որուն
աղջիկը պիղծ ոգի ունէր իր ներ-
տին , լսեց անոր վրայով , ու եկաւ
26 անոր ոտքը ինկաւ ։ Եւ ան կնիկը
* Յոյն . Յոյն
*հեթանոս էր՝ ազգով Փիւնիկ Ա-
սորի , ու կ'աղաչէր անոր՝ որ դևը
27 իր աղջիկէն հանէ ։ Եւ Յիսուս ը-
սաւ անոր . Թող տուր որ առաջ
տղաքը կշտանան . քանզի աղէկ չէ
տղոցը հացը առնել , ու շուներուն
28 ձգել ։ Անիկայ պատասխան տուաւ
ու ըսաւ անոր . Այո Տէր . ինչու
որ շուներն ալ սեղանին տակը
տղոցը փշրանքներէն կը կերակ-
29 րուին ։ Եւ ըսաւ անոր . Աս խօս-
քիդ համար գնա , քու աղջիկէդ
30 դևը ելաւ ։ Եւ երբ իր տունը եր-
թալով՝ գտաւ որ դևը ելած , ու
աղջիկը անկողինին վրայ պառկած
էր ։
լ Մատ. ժե. 29 .
31 լ Եւ նորէն Տիւրոսի ու Սիդոնի
սահմաններէն ելլելով՝ եկաւ Գա-
լիլեայի ծովեզերքը Դեկապոլիսի

Յամ Տեառն 32

Եմատ. Թ. 32 . Ղու. ԺԱ. 14 .

32 սահմաններուն մէջէն ։ Եւ ի մէկը
բերին անոր առջին՝ խուլ ու դը-
ժուարախօս , ու կ'աղաչէին որ ա-
33 նոր վրայ ձեռք դնէ ։ Եւ ժողո-
վուրդէն մէկդի առնելով զանի-
կայ , իր մատերը անոր ականջնե-
րուն մէջը խօթեց՝ ու թուքաւ ,
34 և անոր լեզուին դպաւ , Ու եր-
կինքը նայելով՝ հառաչեց , ու ը-
սաւ անոր . Եփփաթա , (որ ըսել
35 է՝ բացուէ ,) Եւ իսկոյն անոր ա-
կանջները բացուեցան , ու անոր
լեզուին կապը քակուեցաւ , և շի-
36 տակ կը խօսէր ։ Ու պատուիրեց
անոնց՝ որ մէկու մը չըսեն . և որ-
չափ ինքը կը պատուիրէր անոնց ,
անոնք՝ ալ աւելի կը քարոզէին .
37 Ու չափէ դուրս կը զարմանային՝ և
կ'ըսէին . Ամէն բաները աղէկ ըրաւ
ասիկայ , որ խուլերուն լսել կու-
տայ՝ և համրերուն խօսիլ ։

Յովհ. Թ. 6 . Գծ. Է. 33 .

## ԳԼ. Ը

1 Քրիստոս հրաշքով կը կերակրէ ժողովուրդը . 11 փարիսեցւոց խնդրած նշանը չուզեր տալ . 15 կը պատուիրէ իր աշակերտներուն որ զգուշ ըլլան փարիսեցիներուն խմորէն և Հերովդեսեաններուն խմորէն . 22 կոյրի մը աչքերը կը բանայ . 27 կը ծանուցանէ թէ ինքը Քրիստոս է , որ պիտի չարչարուի ու յարութիւն առնէ . 34 և իր աշակերտները կը յորդորէ որ համբերեն , երբոր հալածուին աւետարանի դաւանութեանը համար ։

Մատ. ԺԵ. 32 .

1 Այն օրերը ժողովուրդը խիստ
շատ ըլլալով , և ուտելու բան
մը չունենալով , Յիսուս իրեն կան-
չեց իր աշակերտները՝ ու ըսաւ
2 անոնց . Կը խղճամ աս ժողովուր-
դին վրայ . ինչու որ հիմա իրեք օր
է՝ որ իմ քովս են , և բան մը չու-
3 նին ուտելու . Եւ թէ որ ատոնք
անօթի խրկեմ իրենց տուները ,
ճամբուն մէջ պիտի մարին , ինչու
որ ատոնցմէ ոմանք հեռու տեղէ
4 եկած են ։ Եւ իր աշակերտները
պատասխան տուին իրեն . Աս ա-
նապատիս մէջ ո՞ւսկից կրնայ մէկը
5 հացով կշտացընել ատոնք ։ Եւ
հարցուց անոնց . Քանի՞ նկանակ
ունիք . ու անոնք ըսին . Եօթը ։
6 Եւ հրաման ըրաւ ժողովուրդին՝ որ
գետնին վրայ նստին . ու առաւ
եօթը նկանակը , գոհացաւ , և
կտրեց , ու տուաւ աշակերտնե-
րուն , որ ժողովուրդին առջևը դը-
7 նեն . և դրին ։ Ու քանի մը մանր
ձուկեր ունէին , և օրհնեց , ու
հրաման ըրաւ որ անոնք ալ դնեն
8 անոնց առջևը ։ Եւ կերան ու կըշ-
տացան , ու աւելցած կտորուանք-
ները վերցուցին եօթը զամբիւղ ։
9 Եւ ուտողները չորս հազարի՝ չափ
10 էին . ու արձակեց զանոնք ։ Եւ
շուտ մը նաւը մտնելով աշա-
կերտներուն հետ , եկաւ Դաղմա-
նութայի կողմերը ։
11 Եւ փարիսեցիները ելլելով՝ սկը-
սան անոր հետ վիճաբանութիւն
ընել , և զանիկայ փորձելով՝ իրմէն
12 նշան մը կ'ուզէին երկինքէն ։ Եւ
անիկայ իր հոգիին մէջ հառաչե-
լով ըսաւ . Ի՞նչ է որ աս ազգը
նշան կ'ուզէ . Ճշմարիտ կ'ըսեմ
ձեզի որ աս ազգին նշան պիտի
13 չտրուի ։ Ու զանոնք թող տա-
լով՝ նորէն նաւը մտաւ , ու գնաց
ծովուն մէկալ կողմը ։
14 Եւ հաց առնելու մոռցեր էին ,
ու նաւուն մէջ իրենց հետը միայն
15 մէկ նկանակ մը ունէին ։ Եւ կը
պատուիրէր անոնց՝ ու կ'ըսէր .
Նայեցէ՛ք և զգուշացէ՛ք փարիսե-
ցւոց խմորէն , ու Հերովդեսին խը-
16 մորէն ։ Եւ իրարու հետ կը խոր-
հէին ու կ'ըսէին թէ , Հաց չու-
17 նենալնուս համար է ։ Իսկ Յիսուս
անոնց խորհուրդը գիտնալով՝ ըսաւ
անոնց . Ինչո՞ւ կը խորհիք թէ
հաց չունիք . Դեռ չէ՞ք
հասկընար , ու չէ՞ք իմանար . դեռ
18 սիրտերնիդ թմրա՞ծ է . Աչքեր ու-
նիք , ու չէ՞ք տեսներ , և ականջներ
ունիք , ու չէ՞ք լսեր . և չէ՞ք յիշեր ։
19 Երբոր հինգ նկանակը հինգ հա-
զարին կտրեցի , քանի՞ կողով լե-
ցուն կտորուանք վերցուցիք . ըսին
20 անոր . Տասներկու ։ Ու երբոր
եօթը նկանակը չորս հազարին կը-
րեցի , քանի՞ զամբիւղ լեցուն կը-
տորուանք վերցուցիք . անոնք ալ
21 ըսին . Եօթը ։ Ու ըսաւ անոնց .
Հապա ինչո՞ւ չէք հասկընար ։
22 Եւ Բեթսայիդա եկաւ , ու անոր
առջևը կոյր մը բերին , ու կ'աղա-
23 չէին իրեն որ դպչի անոր . Եւ ա-
նիկայ կոյրին ձեռքէն բռնելով՝ գե-
ղէն դուրս հանեց , և ու անոր աչ-
քերուն թքնելով՝ ձեռքը անոր
վրայ դրաւ , ու կը հարցընէր անոր՝
24 թէ բան մը կը տեսնէ՞ . Ան ալ
նայեցաւ՝ ու կ'ըսէր . Մարդիկներ
կը տեսնեմ ծառերու՝ պէս՝ որ կը
25 պտըտին ։ Նորէն ձեռքը անոր
աչքերուն վրայ դրաւ , ու անոր
նայիլ տուաւ . և ողջացաւ ու ամէն
26 բան համարձակ կը տեսնէր ։ Ետքը
զանիկայ իր տունը խրկելով՝ ըսաւ .
Գեղը մի մտներ , ու գեղին մէջ
մէկուն մի ըսեր ։
27 Եւ Յիսուս իր աշակերտներուն
հետ մէկտեղ Փիլիպպոսի Կեսա-
րիային գեղերը ելաւ . ու ճամբուն
մէջ կը հարցընէր իր աշակերտնե-
րուն՝ ու կ'ըսէր անոնց . Ինծի հա-
մար ո՞վ կ'ըսեն մարդիկ՝ թէ եմ ։
28 Ու անոնք պատասխան տուին՝ ու-
ըսին . Ոմանք՝ Յովհաննէս մկրտիչը ,

Յամ Տեառն 32

Եմատ. ԺԲ. 38 . ԺԴ. 1 . Յովհ. Զ. 30 .

ՂՄատ. ԺԶ. 5 .

ԵՄատ. ԺԶ. 6 . Ղուկ. ԺԲ. 1 .

ԸՄատ. ԺԶ. 7 .

ԲԳլ. Զ. 52 .

ԺՄատ. ԺԴ. 20 . Գլ. Զ. 43 . Ղուկ. Թ. 17 . Յովհ. Զ. 13 .

ԵՄատ. ԺԵ. 37 . Համր 8 .

ԼԳլ. Զ. 52 . Համր 17 .

ԵԳլ. Է. 33 .

ԹՄատ. Ը. 4 . Գլ. Ե. 43 .

ԼՄատ. ԺԶ. 13 . Ղուկ. Թ. 18 .

ԸՄատ. ԺԴ. 2 .

Յամի Տեառն
32

և ուրիշները՝ Եղիան , ուրիշներն
29 ալ՝ մարգարէներէն մէկը ։ Եւ
ինքը ըսաւ անոնց . Հապա դուք
ինծի համար ո՞վ կ՚ըսէք՝ թէ եմ .
պատասխան տուաւ Պետրոս՝ ու
ըսաւ անոր . ՅԴուն ես Քրիստո-
30 սը ։ ՂԵւ սաստիկ պատուիրեց ա-
նոնց՝ որ իրեն համար մէկու մը
չըսուցեն ։

յՄատ. ժզ. 16 ։ Յօհ. զ. 70 ։ ժա. 27 ։
ղՄատ. ժզ. 20 ։

31 Ու ճսկսաւ սորվեցընել անոնց
թէ , պէտք է որ Որդին մարդոյ շատ
չարչարանքներ կրէ , ու երէցներէն
և քահանայապետներէն ու դպիր-
ներէն մերժուի , ու սպաննուի , և
իրեք օրէն ետև յարութիւն առնէ ։

ճՄատ. ժզ. 21 ։ ժէ. 21 ։ Ղու. թ. 22 ։

32 Ու այս խօսքը յայտնի խօսեցաւ .
և Պետրոս մէկդի առաւ զանիկայ ,
ու սկսաւ յանդիմանել զանիկայ ։
33 Եւ ինքը դարձաւ՝ ու իր աշակերտ-
ներուն նայելով , յանդիմանեց
Պետրոսը՝ ու ըսաւ . Ետիս գնա՝
Սատանայ , ինչու որ դուն Աստու-
ծոյ բաները չես մտածեր , հապա
մարդոց բաները ։
34 Եւ ժողովուրդը իր աշակերտնե-
րուն հետ մէկտեղ իրեն կանչելով՝
ըսաւ անոնց . մՈվ որ կ՚ուզէ իմ
ետևէս գալ , թող իր անձը ու-
րանայ , և իր խաչը վերցընէ , ու
35 իմ ետևէս գայ ։ Վասն զի յով
որ կ՚ուզէ իր անձը ապրեցընել ,
պիտի կորսընցընէ անիկայ . և ով
որ ինծի ու աւետարանին համար
իր անձը կորսընցընէ , պիտի ապ-
36 րեցընէ անիկայ ։ Քանզի ի՞նչ
օգուտ է մարդուն՝ որ բոլոր աշ-
խարհը վաստըկի , և իր անձը կոր-
37 սընցընէ . կամ իր անձին համար
ի՞նչ ազատչէք պիտի տայ մարդ ։

մՄատ. ժ. 38 ։ ժզ. 24 ։ Ղու. թ. 23 ։ ժդ. 27 ։
յՅօհ. ժբ. 25 ։

38 Վասն զի նով որ ՂզիսԼ ու իմ խօս-
քերս պատուիլը ամօթ սեպէ աս
շնացող ու մեղաւոր ազգիս մէջ ,
Որդին մարդոյ ալ զանիկայ պատ-
ուիլը ամօթ պիտի սեպէ՝ երբոր գայ
իր Հօրը փառքովը սուրբ հրեշ-
39 տակներուն հետ ։ Եւ ըսաւ ա-
նոնց . ոՃշմարիտ կ՚ըսեմ ձեզի , որ
հոս ներկայ եղողներէն մէկ քանի-
ները կան՝ որոնք մահուան համը
պիտի չառնեն , մինչև որ տեսնեն
ՂԱստուծոյ թագաւորութիւնը զօ-
րութիւնով եկած ։

նՄատ. ժ. 33 ։ Ղու. թ. 26 ։ ժբ. 9 ։
ՂՏեսլ Հռով. ա. 16 ։ Բ Տիմ. ա. 8 ։ բ. 12 ։
ոՄատ. ժզ. 28 ։ Ղու. թ. 27 ։
ՂՄատ. իդ. 30 ։ իե. 31 ։ Ղու. իբ. 18 ։

ԳԼ. Թ

1 Քրիստոսի այլակերպութիւնը ։ 11 Քրիստոս իր աշակերտներուն կը սորվեցընէ Եղիայի գալուն վրայով . 24 խուլ և համր դև մը կը հանէ . 30 կը նախաձայնէ իր մահը և յարութիւնը . 34 կը յորդորէ իր աշակերտները որ հեզ ըլլան . 38 և կը պատուիրէ անոնց որ իրեն հակառակ չեղողները չարգիլեն , ու հաւատացեալներուն գայթակղութիւն չտան ։

1 Եւ ավեց օրէն ետև Յիսուս իր հե-
տը առաւ Պետրոսը՝ ու Յակո-
բոսը և Յովհաննէսը , ու անոնք
մէկ բարձր լեռ մը հանեց առան-
ձին , և անոնց առջևը այլակերպե-
2 ցաւ ։ Ու իր հանդերձները եղան
փայլուն բխիստ ճերմակ , անանկ
որ երկրի վրայ թափիչ մը չկրնար
3 այնպէս ճերմըկցընել ։ Ու Եղիան
Մովսէսին հետ երևցաւ անոնց , և
4 Յիսուսին հետ կը խօսէին ։ Եւ
Պետրոս պատասխան տուաւ՝ ու ը-
սաւ Յիսուսին . Ռաբբի՝ աղէկ է
որ հոս կենանք . ու իրեք խրճիթ
շինենք . մէկը քեզի , և մէկը Մով-
5 սէսին , ու մէկը Եղիային . Վասն
զի չէր գիտեր թէ ինչ խօսի , ին-
6 չու որ զարհուրեր էին ։ Եւ մէկ
ամպ մը հովանի եղաւ անոնց վրայ ,
ու ձայն մը եկաւ ամպէն ըսելով .
Ասիկայ է իմ սիրելի որդիս , ասոր
7 մտիկ ըրէք ։ Եւ յանկարծ ասդին
անդին որ նայեցան , ալ ուրիշ
մէկը չտեսան , հապա միմիայն Յի-
8 սուսը իրենց հետ ։ գՈւ երբոր լեռ-
նէն վար կ՚իջնէին , պատուիրեց ա-
նոնց որ տեսածնին մէկու մը չպատ-
մեն , բայց միայն Որդին մարդոյ
մեռելներէն յարութիւն առնելէն
9 ետև ։ Եւ անոնք այն խօսքը պա-
հեցին , ու մէջերնին հարցուփորձ
կ՚ընէին՝ թէ մեռելներէն յարու-
10 թիւն առնելը ի՞նչ է ։ Եւ իրեն
հարցուցին՝ ու ըսին . Ան ի՞նչ է
որ դպիրները կ՚ըսեն թէ , դՊէտք
11 է որ առաջ Եղիան գայ ։ Անիկայ
պատասխան տուաւ՝ ու ըսաւ ա-
նոնց . Յիրաւի առաջ Եղիան կու
գայ , և ամէն բան կարգի կը դնէ .
և թէ եինչպէս գրուած է Որդւոյ
մարդոյ համար , որ շատ չարչա-
րանքներ պիտի կրէ՝ ու Ղանար-
12 գուի . Բայց ձեզի կ՚ըսեմ , որ
զԵղիան եկաւ ալ , և ինչ որ ու-
զեցին՝ ըրին անոր . ինչպէս որ
գրուած է անոր համար ։
13 ըՈւ աշակերտներուն քովը գա-
լով՝ տեսաւ շատ ժողովուրդ անոնց
բոլորտիքը՝ և դպիրները , որ վի-
ճաբանութիւն կ՚ընէին անոնց հետ ։
14 Եւ շուտ մը բոլոր ժողովուրդը երբ-
որ տեսան անիկայ՝ խիստ զարմա-
ցան , ու առաջ վազելով՝ բարև
15 կու տային անոր ։ Եւ հարցուց
դպիրներուն թէ , Ի՞նչ վիճաբա-
16 նութիւն կ՚ընէք անոնց հետ ։ Ու
ժողովուրդէն թմէկը պատասխան
տալով՝ ըսաւ . Վարդապետ՝ իմ
որդիս քեզի բերի , որ համր ոգի
17 ունի . Եւ ուր որ անոր հասնի ,
զանիկայ գետինը կը զարնէ . ան
ալ կը փրփրի , և իր ակռաները կը
կճռցընէ , ու կը ցամքի . և քու
աշակերտներուդ ըսի որ զանիկայ
18 հանեն , ու չկրցան ։ Պատասխան
տուաւ անոնց՝ ու ըսաւ . Ո՛վ ան-

Յամի Տեառն
32

բԴան. է. 9 ։ Մատ. իը. 3 ։
գՄատ. ժէ. 9 ։
դՄաղ. դ. 5 ։ Մատ. ժէ. 10 ։
եՍաղ. իբ. 6 ։ Եսայ. ծգ. 2 ։ Դան. թ. 26 ։
զՂու. իգ. 11 ։ Փիլ. բ. 7 ։
եՄատ. ժա. 14 ։ ժէ. 12 ։ Ղու. ա. 17 ։
ըՄատ. ժէ. 14 ։ Ղու. թ. 37 ։
թՄատ. ժէ. 14 ։ Ղու. թ. 38 ։
ժՄատ. ժէ. 1 ։ Ղու. թ. 28 ։

Ցամն Տեառն 32

հաւատ ազգ՝ մինչև ե՞րբ ձեզի հետ
պիտի ըլլամ, մինչև ե՞րբ ձեզի
պիտի համբերեմ. ինծի բերէք
19 անիկայ։ Եւ զանիկայ բերին ի-
րեն. ծ երբոր դևը տեսաւ զանի-
կայ, շուտ մը չար ոգին ցնցեց ա-
նիկայ, ու գետինը ինկած կը թա-
20 ւալտրկէր ու կը փրփրէր։ Եւ
Յիսուս հարցուց անոր հօրը ու
ըսաւ. Ո՞րչափ ատեն է՝ որ աս
բանը ասոր եղաւ. ու անիկայ ը-
21 սաւ. Տղայութենէն ի վեր. Եւ
շատ անգամ կրակի ու ջուրի մէջ
կը նետէ ասիկայ որ կորսնցընէ.
բայց թէ որ կարողութիւն մը ու-
նիս. օգնէ մեզի խղճալով մեր վը-
22 րայ։ Եւ Յիսուս ըսաւ անոր.
Թէ որ կարող ես հաւատալու.
էամէն բան կարելի է անոր որ կը
23 հաւատայ. Եւ տղուն հայրը շուտ
մը աղաղակեց ու արցունքով ը-
սաւ. Կը հաւատամ Տէր. օգնէ
24 իմ անհաւատութեանս. Յիսուս
երբոր տեսաւ որ ժողովուրդը վրան
կը դիզուի. սաստեց պիղծ ոգիին
ու ըսաւ անոր. Համր ու խուլ
ոգի՛ ես կը հրամայեմ քեզի, ելի՛ր
ատկէ, ու մէյմըն ալ չմտնես ա-
25 տոր ներսը։ Եւ կանչուըռտելով
սաստիկ ցնցեց զանիկայ. ու ելաւ.
և տղան մեռելի պէս եղաւ. անանկ
որ շատերը ըսին թէ. Մեռաւ.
26 Եւ Յիսուս անոր ձեռքէն բռնելով՝
վերցուց զանիկայ. ան ալ կայ-
27 նեցաւ. ԼՈւ երբոր ինքը տուն
մտաւ, իր աշակերտները առանձին
հարցուցին իրեն ըսելով. Մենք
ինչո՞ւ չկրցանք հանել զանիկայ։
28 Եւ ըսաւ անոնց. Աս տեսակը կա-
րելի չէ ուրիշ բանով մը ելլել.
բայց միայն աղօթքով ու ծոմա-
պահութեամբ։
29 Եւ անկէ ելլելով՝ Գալիլեայի
մէջէն կ՚անցնէին. ու չէր ուզեր որ
30 մէկը գիտնայ։ Է ինչու որ կը սոր-
վեցընէր իր աշակերտներուն ու
կ՚ըսէր անոնց թէ, Որդին մարդոյ
պիտի մատնուի մարդոց ձեռքը, և
զանիկայ պիտի սպաննեն. ու երբ-
որ սպաննուի, երրորդ օրը յարու-
31 թիւն պիտի առնէ։ Եւ անոնք
չէին հասկընար ան խօսքը, ու կը
վախնային իրեն հարցընելու։
32 Ծ Եւ եկաւ Կափառնայում, ու
երբոր տուն մտաւ, հարցուց ա-
նոնց. Ի՞նչ վիճաբանութիւն կ՚ը-
33 նէիք ճամբան իրարու հետ։ Եւ
անոնք լուռ կեցան. ինչու որ ճամ-
բուն մէջ իրարու հետ վիճաբանու-
34 թիւն կ՚ընէին թէ ով մեծ է. Ու
երբոր նստաւ, կանչեց տասուեր-
կուքը. ու ըսաւ անոնց Լ թէ որ
մէկը կ՚ուզէ առաջին ըլլալ ամե-
նուն յետինը պիտի ըլլայ, և ա-
35 մենուն սպասաւորը։ Ու Ⴜ տղայ
մը առաւ կայնեցուց անոնց մէջը.
և իր գիրկը առնելով զանիկայ ը-
36 սաւ անոնց. Ով որ ասանկ տղոց-
մէն մէկը ընդունի իմ անունովս.
զիս կ՚ընդունի. և Ⴢ ով որ զիս ըն-
դունի, չէ թէ զիս կ՚ընդունի.
37 հապա զիս խրկողը։ Ն Պատասխան
տուաւ անոր Յովհաննէս ու ըսաւ.
Վարդապետ մէկը տեսանք որ քու
անունովդ դևեր կը հանէր. ու մեր
ետևէն չպտըտիր. և զանիկայ ար-
գիլեցինք մեր ետևէն չպտըտելուն
38 համար։ Եւ Յիսուս ըսաւ. Մի՛
արգիլէք զանիկայ. ± ինչու որ մէկը
չկայ որ իմ անունովս հրաշք գոր-
ծէ, ու կարենայ շուտ մը զիս հայ-
39 հոյել. Քանզի ան որ * մեզի հա-
40 կառակ չէ, մեր կողմն է։ Ն Ասան
զի ով որ ձեզի գաւաթ մը ջուր
խմցընէ † աս անունովս՝ թէ դուք
Քրիստոսինն էք, ճշմարիտ կ՚ըսեմ
ձեզի, Անիկայ իր վարձքը պիտի
41 չկորսնցընէ։ Ն Եւ ով որ գայ-
թակղեցընէ աս պզտիկներէն մէկը
որ ինծի կը հաւատան, աւելի ա-
ղէկ էր անոր՝ որ իշու աղացքի քար
մը իր վիզէն կախուէր, ու ծովը
42 ձգուէր։ Ն Եւ թէ որ քու ձեռքդ
քեզ կը գայթակղեցընէ, կտրէ ա-
նիկայ. աղէկ է քեզի պակասաւոր
մտնել կեանքը, քան թէ երկու
ձեռք ունենալ՝ ու գեհեանը երթալ
43 չմարելու կրակին մէջը. Ն Ուր որ
անոնց որդը չմեռնիր ու կրակը
44 չմարիր։ Եւ թէ որ քու ոտքդ
քեզ կը գայթակղեցընէ, կտրէ
անիկայ. աղէկ է քեզի կաղ մտնել
կեանքը, քան թէ երկու ոտք ու-
նենալ՝ ու գեհեանը ձգուիլ չմա-
45 րելու կրակին մէջը. Ուր որ անոնց
որդը չմեռնիր, ու կրակը չմարիր։
46 Եւ թէ որ քու աչքդ քեզ կը գայ-
թակղեցընէ, հանէ անիկայ. ա-
ղէկ է քեզի մէկ աչքով Աստուծոյ
թագաւորութիւնը մտնել, քան
թէ երկու աչք ունենալ՝ ու կրակին
47 գեհեանը ձգուիլ. Ուր որ անոնց
որդը չմեռնիր, ու կրակը չմարիր։
48 Ինչու որ ամէն մարդ կրակով պի-
տի աղուի. Ն և ամէն զոհ աղով
49 պիտի աղուի։ Ն Աղը աղէկ է, բայց
թէ որ աղը անհամնայ, ինչո՞վ պի-
տի համովցընէք. Ն Ձեր անձին մէջ
աղ պահեցէք. և Ն իրարու հետ խա-
ղաղութիւն ըրէք։

Margin references (left): ծ Գլ. ա. 26։ Ղու. թ. 42։ — է Մատ. ժէ. 19։ Գլ. ժա. 23։ Ղու. ժէ 6։ Յով. ժա. 40։ — ւ Մատ. ժէ. 18։ — ի Մատ. ժէ. 21։ Ղու. թ. 44։ — ծ Մատ. ժը. 1։ Ղու. թ. 46։ իբ. 24։ — Լ Մատ. ի. 26։ 27։ Գլ. ժ. 43։

Ցամն Տեառն 32

Margin references (right): Ⴜ Մատ. ժը. 2։ Գլ. ժ. 16։ — Ⴢ Մատ. ժ. 40։ Ղու. թ. 48։ — Ն Թու. ժա. 28։ Ղու. թ. 49։ — ± Ա Կոր. ժբ. 3։ — * Տես Մատ. ժբ. 30։ — Ն Որ ձեզի հակառակ չէ. ձեր — Ն Մատ. ժ. 42։ — † Որ իմ — Ն Մատ. ժը. 6։ Ղու. ժէ. 1։ — Ն Օր. ժգ. 6։ Մատ. ե. 29։ ժը. 8։ — Ն Ես. կզ. 24։ — Ն Ղև. բ. 13։ Եզեկ. իգ. 24։ — Ն Մատ. ե. 13։ Ղու. ժդ. 34։ — Ն Եփե. դ. 29։ Կող. դ. 6։ — Ն Հռով. ժբ. 18։ ժդ. 19։ Բ Կոր. ժգ. 11։ Եբր. ժբ. 14։

ԳԼ. Ժ

2 Քրիստոս կը վիճաբանի փարիսեցիներուն հետ կնիկ արձակելու վրայով 13 իրեն բերուած տղաքը կ՚օրհնէ. 17 կ՚իմացընէ հարուստ մարդու մը թէ ինչ ընելու է որ յաւիտենական կեանքը ժառանգէ 23 հարստութեան

Յամի Տեառն
33

*վտանգը կը ցուցընէ իր աշակերտներուն . 28 վարձք կը խոստանայ անոնց՝ որ աւետարանին համար իրենց ո՛ր և իցէ բաները կը թողուն . 32 կը նախաձայնէ իր մահը և յարութիւնը . 35 երկու փառասէր աշակերտները կը խրատէ որ աւելի իրեն հետ չարչարուիլը մտածեն . 46 և կոյր Բարտիմէոսին աչքերը կը՚բանայ ։*

ա Մատ. ժթ. 1 ։ Յով. ժ. 40 ։ ժա. 7 ։

1 Ու աանկէ ելլելով՝ Հրէաստանի
սահմանները եկաւ Յորդանա-
նու անդիի կողմէն, ու նորէն ժո-
ղովուրդները անոր քովը կը ժող-
վուէին. և ինչպէս որ սովորութիւն
ունէր, դարձեալ կը սորվեցընէր
անոնց ։

բ Մատ. ժթ. 3 ։

2 բՈւ փարիսեցիները քովը եկան,
և զանիկայ փորձելով կը հարցընէին
անոր թէ Արժա՞ն է որ էրիկը իր
3 կնիկը արձակէ ։ Եւ անիկայ պա-
տասխան տուաւ՝ ու անոնց ըսաւ .
Մովսէս ձեզի ի՞նչ պատուիրեց ։

գ Բ Օր. իդ. 1 ։ Մատ. ե. 31 ։ ժթ. 7 ։

4 Եւ անոնք ըսին . գՄովսէս հրաման
տուաւ արձակման գիր գրել, ու ար-
5 ձակել ։ Եւ Յիսուս պատասխան
տալով՝ անոնց ըսաւ . Ձեր սրտին
կարծրութեանը համար գրեց ձեզի
6 ատ պատուէրը . Բայց ստեղծա-
գործութեան սկիզբէն դԱստուած

դ Ծն. ա. 27 ։ ե. 2 ։

անոնք արու և էգ ըրաւ, ու ըսաւ .
7 եԱսոր համար մարդ իր հայրը ու

ե Ծն. բ. 24 ։ ա Կոր. զ. 16 ։ Եփե. ե. 31 ։

մայրը պիտի ձգէ, և իր կնկանը
8 պիտի յարի . Ու երկուքը մէկ
մարմին պիտի ըլլան . ուստի ալ
երկուք չեն, հապա մէկ մարմին .
9 Ուրեմն ան որ Աստուած միաւո-
10 րեց, մարդ թող՝ չզատէ ։ Եւ
տունը իր աշակերտները նորէն նոյն
11 բանը հարցուցին իրեն ։ Ու ըսաւ

զ Մատ. ե. 32 ։ ժթ. 9 ։ Ղու. ժզ. 18 ։ Հռով. է. 3 ։ ա Կոր. է. 10, 11 ։

անոնց . զՈ՛վ որ իր կնիկը արձա-
կէ՝ և ուրիշ մը առնէ, անոր դէմ
12 շնութիւն կ՚ընէ ։ Ու կնիկ մը
թէ որ իր էրիկէն զատուի՝ և ու-
րիշ էրկան մը ըլլայ, շնութիւն
կ՚ընէ ։

է Մատ. ժթ. 13 ։ Ղու. ժը. 15 ։

13 էԵւ մասր տղաք բերին իրեն, որ
անոնց դպչի . բայց աշակերտները
14 կը յանդիմանէին բերողները ։ Յի-
սուս երբոր տեսաւ, սրդողելով՝ ա-
նոնց ըսաւ . Թող տուէք որ մանր
տղոցը որ ինծի գան, և մի՛ ար-
գիլէք ատոնք . ինչու որ ըԱստու-

ը ա Կոր. ժդ. 20 ։ ա Պետ. բ. 2 ։

ծոյ թագաւորութիւնը ատանկնե-
15 րունն է ։ Ճշմարիտ կ՚ըսեմ ձեզի .

թ Մատ. ժը. 3 ։

թՈ՛վ որ Աստուծոյ թագաւորու-
թիւնը պզտիկ տղու մը պէս չըն-
դունի, բնաւ պիտի չմտնէ անոր
16 մէջը ։ Եւ անոնք գիրկը առաւ,
վրանին ձեռք դրաւ, ու օրհնեց զա-
նոնք ։

ժ Մատ. ժթ. 16 ։ Ղու. ժը. 18 ։

17 ժՈւ երբոր անիկայ դուրս ելաւ
ճամբուն մէջ, ահա մէկ մարդ մը
վազեց՝ ու անոր առջևը ծունկ չո-
քելով կը հարցընէր անոր՝ ու կ՚ը-
սէր . Բարի վարդապետ՝ ի՞նչ
ընեմ որ յաւիտենական կեանքը
18 ժառանգեմ ։ Եւ Յիսուս ըսաւ
անոր . Ինչո՞ւ զիս բարի կ՚անուա-
նես . մէկէն ՚ի զատ բարի չկայ,
19 որ է Աստուած ։ Պատուիրանքնե-

ի Ել. ի ։ Հռով. ժգ. 9 ։

րը գիտես . իՇնութիւն մի՛ ըներ,
Սպանութիւն մի՛ ըներ, Գողու-
թիւն մի՛ ըներ, Սուտ վկայութիւն
մի՛ ըներ, Զրկանք մի՛ ըներ,
Քու հայրդ ու մայրդ պատուէ ։
20 Անիկայ պատասխան տուաւ՝ ու
ըսաւ անոր . Վարդապետ՝ ա-
տոնք ամէնը մանկութենէս ՚ի
21 վեր պահեր եմ ։ Եւ Յիսուս անոր
նայելով՝ սիրեց զանիկայ, ու ըսաւ
անոր . Մէկ բան մը պակաս է
քեզի . գնա՛ ունեցածդ ծախէ, և
տո՛ւր աղքատներուն, ու լերկինքը

լ Մատ. զ. 19, 20 ։ ժթ. 21 ։ Ղու. ժբ. 33 ։ ժզ. 9 ։

գանձ պիտի ունենաս, և խաչը
վերցո՛ւր՝ ու եկուր իմ ետևէս ։
22 Եւ անիկայ աս խօսքին համար խո-
ժոռելով՝ տրտմած գնաց . ինչու
23 որ շատ ստացուածք ունէր ։ Եւ
խՅիսուս իր բոլորտիքը նայելով՝

խ Մատ. ժթ. 23 ։ Ղու. ժը. 24 ։

ըսաւ իր աշակերտներուն . Ո՛րչափ
դժուար է անոնց՝ որ հարստու-
թիւն ունին, Աստուծոյ թագաւո-
24 րութիւնը մտնել ։ Եւ աշակերտ-
ները զարմացեր էին անոր խօսքե-
րուն վրայ . բայց Յիսուս նորէն
պատասխան տալով՝ անոնց ըսաւ .
Ո՛րդեակներ՝ ո՛րչափ դժուար է
ծիրենց հարստութեանը յուսացող-

ծ Յոբ. լա. 24 ։ Սաղ. ծբ. 7 ։ Կբ. 10 ։ ա Տիմ. զ. 17 ։

ներուն Աստուծոյ թագաւորու-
25 թիւնը մտնել ։ Դիւրին է որ
ուղտը ասեղին ծակէն անցնի, քան
թէ հարուստը Աստուծոյ թագա-
26 ւորութիւնը մտնէ ։ Եւ անոնք
խիստ շատ կը զարմանային՝ ու
կ՚ըսէին իրարու . Ալ ո՞վ կրնայ
27 փրկուիլ ։ Եւ Յիսուս անոնց նա-

կ Երեմ. լբ. 17 ։ Մատ. ժթ. 26 ։ Ղու. ա. 37 ։

յելով՝ ըսաւ . կԱտիկայ մարդոց
կողմանէ անկարելի է, բայց ոչ
Աստուծոյ կողմանէ . քանզի Աս-
տուծոյ կողմանէ ամէն բան կարելի
28 է ։ հՊետրոս սկսաւ ըսել անոր .

հ Մատ. ժթ. 27 ։ Ղու. ժը. 28 ։

Ահա՛ մենք ամէն բան թողուցինք՝
29 և քու ետևէդ եկանք ։ Եւ Յիսուս
պատասխան տալով՝ ըսաւ . Ճշմա-
րիտ կ՚ըսեմ ձեզի, Մէկը չկայ որ
թողուց տուն, կամ եղբայրներ,
կամ քոյրեր, կամ հայր, կամ
մայր, կամ կին, կամ որդիներ,
կամ արտեր՝ ինծի համար ու ա-
30 ւետարանին համար, ձՈր պիտի

ձ Բ Մն. իե. 9 ։ Ղու. ժը. 30 ։

չառնէ հարիւրապատիկ հիմա աս
ատենս՝ տուներ, ու եղբայրներ,
և քոյրեր, ու մայրեր, և որդիներ,
ու արտեր՝ հալածանաց հետ . և

ղ Մատ. ժթ. 30 ։ ի. 16 ։ Ղու. ժգ. 30 ։

գալու աշխարհին մէջ յաւիտենա-
31 կան կեանքը ։ ղԲայց շատ առա-
ջիններ պիտի ըլլան ՚յետին, ու յե-
տիններ՝ առաջին ։

ճ Մատ. ի. 17 ։ Ղու. ժը. 31 ։

32 ճԵւ անոնք դէպ ՚ի Երուսաղէմ

Յամ Տեառն 33

կ'ելլէին , ու ճամբուն մէջն էին .
և Յիսուս անոնցմէ առաջ կ'եր-
թար , ու անոնք կը զարմանային ,
ու ետևէն երթալով՝ կը վախնա-
յին ։ [f]Եւ նորէն քովը առնելով
տասներկուքը , սկսաւ ըսել ա-
նոնց ինչ բաներ որ իրեն պիտի

[f]Գւ. Ը. 31 ։ Թ. 30 ։ Ղու. Թ. 22 ։ ԺԸ. 31 ։

33 պատահէին . Ու ըսաւ . Ահա
Երուսաղէմ կ'ելլենք , և Որդին
մարդոյ պիտի մատնուի քահանա-
յապետներուն ու դպիրներուն , և
զանիկայ մահուան պիտի դատա-
պարտեն , ու զանիկայ հեթանոս-
34 ներուն պիտի մատնեն . Եւ զա-
նիկայ ծաղր պիտի ընեն ու ծեծեն ,
և անոր վրայ պիտի թքնեն , ու
զանիկայ մեռցընեն . ու երրորդ
օրը յարութիւն պիտի առնէ ։
35 [g]Եւ անոր քովը գացին Յակոբոս
ու Յովհաննէս՝ Զեբեդէոսի որ-
դիքը , ու ըսին . Վարդապետ՝
կ'ուզենք որ ինչ որ խնդ-
36 րենք , մեզի ընես ։ Ան ալ ըսաւ
անոնց . Ի՞նչ կ'ուզէք , որ ձեզի
37 ընեմ ։ Ու անոնք ըսին իրեն .
Շնորհէ՛ մեզի որ նստինք՝ մէկը
մէկը աջ կողմդ , և մէկալը՝ ձախ
38 կողմդ քու փառացդ մէջ ։ Եւ Յի-
սուս ըսաւ անոնց . Չէք գիտեր՝
ինչ կը խնդրէք . կրնա՞ք խմել ան
գաւաթը՝ որ ես կը խմեմ , և ան
մկրտութիւնովը մկրտուիլ՝ որով
39 ես կը մկրտուիմ ։ Եւ անոնք ը-
սին իրեն , Կրնանք . ու Յիսուս
ըսաւ անոնց . Ան գաւաթը որ ես
կը խմեմ՝ պիտի խմէք , և ան
մկրտութիւնովը որ ես կը մկր-
40 տուիմ՝ պիտի մկրտուիք . Բայց
իմ աջ կողմս ու ձախ կողմս նստիլը՝
իմս չէ տալը . հապա որոնց որ
41 պատրաստուած է ։ [h]Ու երբոր մե-
կալ տասը աշակերտները լսեցին ,
սկսան Յակոբոսին ու Յովհաննէ-
42 սին նեղանալ ։ Իսկ Յիսուս իրեն
կանչեց զանոնք՝ ու ըսաւ անոնց .
[i]Գիտէք որ ազգաց իշխան սե-
պուածները կը տիրեն անոնց , և
անոնց մեծամեծները կ'իշխեն ա-
43 նոնց . [j]Բայց ձեր մէջը անանկ պի-
տի չըլլայ . հապա ձեզմէ ով որ մեծ
ըլլալ կ'ուզէ , անիկայ ձեր սպասա-
44 ւորը ըլլայ . Ու ձեզմէ ով որ ա-
ռաջին ըլլալ կ'ուզէ , անիկայ ամե-
45 նուն ծառայ ըլլայ ։ Քանզի [k]Որդին
մարդոյ ալ չեկաւ սպասաւորու-
թիւն ընդունելու , հապա սպասա-
ւորութիւն ընելու , և [l]իր կեանքը
շատերուն համար փրկանք մը
տալու ։
46 [m]Ու եկան Երիքով . ու երբոր
Երիքովէն կ'ելլէր աշակերտներովը
և շատ բազմութիւնով , Տիմէոսի
որդին կոյր Բարտիմէոսը ճամբուն

[g]Մատ. Ի. 20 ։
[h]Մատ. Ի. 24 ։
[i]Ղու. ԻԲ. 25 ։
[j]Մատ. Ի. 26. 28 ։ Գւ. Թ. 34 ։ Ղու. Թ. 48 ։
[k]Յով. ԺԳ. 14 ։ Փիլ. Բ. 7 ։
[l]Մատ. Ի. 28 ։ Ա Տիմ. Բ. 6 ։ Տիտ. Բ. 14 ։
[m]Մատ. Ի. 29 ։ Ղու. ԺԸ. 35 ։

47 քովը նստեր էր մուրալու ։ Ու
երբոր լսեց՝ թէ Յիսուս Նազով-
րեցին է , սկսաւ աղաղակել՝ ու
ըսել . Յիսու՛ս որդի՛ Դաւիթի՛
48 ողորմէ՛ ինծի ։ Եւ շատերը կը
յանդիմանէին զանիկայ , որ լռէ .
բայց անիկայ՝ ալ աւելի կ'աղաղա-
կէր , Որդի՛ Դաւիթի՛ ողորմէ՛ ին-
49 ծի ։ Եւ Յիսուս կանգ առնելով՝
ըսաւ որ անիկայ կանչեն . կանչե-
ցին կոյրը՝ ու ըսին անոր . Քաջ
50 եղիր , ելի՛ր՝ քեզ կը կանչէ ։ Եւ
անիկայ իր հանդերձը ձգելով ,
51 ելաւ ու եկաւ Յիսուսին ։ Եւ
Յիսուս պատասխան տուաւ՝ ու
անոր ըսաւ . Ի՞նչ կ'ուզես որ քե-
զի ընեմ . Կոյրը ըսաւ անոր .
Ռաբբունի՛ որ աչքերս բացուին ։
52 Եւ Յիսուս ըսաւ անոր . [n]Գնա՛
քու հաւատքդ քեզ բժշկեց . և
շուտ մը անոր աչքերը բացուեցան ,
ու ճամբան Յիսուսին ետևէն կ'եր-
թար ։

Յամ Տեառն 33

[n]Մատ. Թ. 22 ։ Գւ. Ե. 34 ։

## ԳԼ. ԺԱ

1 Քրիստոս իշու վրայ հեծած՝ Երուսաղէմ կը մտնէ հանդէսով . 13 անպտուղ թզենին կ'անիծէ . 15 տաճարը կը մաքրէ . 20 կը յորդորէ իր աշակերտները որ հաստատ հաւատք ունենան , և իրենց թշնամիներուն ներեն . 27 և իր ըրած բաներուն օրինաւոր ըլլալը կը հաստատէ Յովհաննէսին վկայութեամբը , որ Աստուծմէ խրկուած մարդ մըն էր ։

1 Ու [o]երբոր Երուսաղէմին մօտեցան՝
Բեթփագէ ու Բեթանիա՝ դէպ
'ի Ձիթենեաց լեռը , Յիսուս իր
աշակերտներէն երկուքը խրկեց .
2 Եւ ըսաւ անոնց . Գացէք ատ ձեր
դիմացի գեղը . և անոր մէջ մըտ-
նելնուդ պէս՝ պիտի գտնէք կապած
աւանակ մը , որուն վրայ մարդ մը
նստած չէ . արձըկեցէք անիկայ՝ ու
3 բերէք . Եւ թէ որ մէկը ըսէ ձեզի
թէ , Ատ ի՞նչ կ'ընէք , ըսէ՛ք թէ՝
Տէրոջը պէտք է . և շուտ մը հոս
4 պիտի խրկէ զանիկայ ։ Գացին՝
ու գտան աւանակը դուրսը փողոցին
մէջ դրանը քով կապած , ու ար-
5 ձըկեցին զանիկայ ։ Եւ հոն կայ-
նողներէն ոմանք ըսին անոնց . Ի՞նչ
կ'ընէք որ կ'արձըկէք ատ աւանա-
6 կը ։ Եւ անոնք ըսին անոնց ինչ-
պէս որ Յիսուս պատուիրեր էր .
7 ու իրենց թող տուին ։ Եւ աւա-
նակը Յիսուսին բերին , ու անոր
վրայ իրենց հանդերձները դրին , ու
8 նստաւ անոր վրայ ։ [p]Եւ շատե-
րը իրենց հանդերձները ճամբուն
վրայ փռեցին , և ուրիշները ծառե-
րէն ճիւղեր կը կտրէին , ու ճամ-
9 բուն վրայ կը տարածէին ։ Եւ
առջևէն ու ետևէն գացողները կ'ա-
ղաղակէին ու կ'ըսէին . Ովսաննա .
[q]Օրհնեա՛լ է ան որ Տէրոջը անունո-
10 վը կու գայ . Օրհնեա՛լ է մեր Դա-

[o]Մատ. ԻԱ. 1 ։ Ղու. ԺԹ. 29 ։ Յով. ԺԲ. 14 ։
[p]Մատ. ԻԱ. 8 ։
[q]Սաղ. ՃԺԸ. 26 ։

Յամ Տեառն 33

* Ողջոյն՝ Տէրոջը անունովը կու գայ .
դ Մատ. իա. 12 ։
ե Մատ. իա. 18 ։
զ Մատ. իա. 19 ։
† Ողջոյն՝ Եւ Յիսուս
է Մատ. իա. 12 ։ Ղու. ժթ. 45 ։ Յով. բ. 14 ։
ը Ես. ծզ. 7 ։
թ Երեմ. է. 11 ։
ժ Մատ. իա. 45. 46 ։ Ղու. ժթ. 47 ։
ի Մատ. է. 28 ։ Գլ. ա. 22 ։ Ղու. դ. 32 ։
լ Մատ. իա. 19 ։
խ Մատ. ժէ. 19 ։ իա. 21 ։ Ղու. ժէ. 6 ։
ծ Մատ. է. 7 ։ Ղու. ժա. 9 ։ Յով. ժդ. 13 ։ ժե. 7 ։ ժզ. 24 ։ Յակ. ա. 5, 6 ։
կ Մատ. զ. 14 ։ Կող. գ. 13 ։
հ Մատ. ժը. 35 ։

ւիմ հօրը Թագաւորութիւնը որ
*կու գայ . Ովսաննա 'ի բարձունս ։
11 դԵՒ Յիսուս մտաւ Երուսաղէմ՝
ու տաճարը , և չորս կողմը ամէն
բաները աչքէ անցուց . և արդէն
ժամանակը իրիկուն ըլլալով՝ Բե֊
թանիա ելաւ տասուերկուքին հետ
մէկտեղ ։
12 եՈւ հետեւեալ օրը՝ երբոր Բե֊
թանիայէն կ'ելլէին , անօթեցաւ .
13 զԵՒ հեռուանց տերեւալից թզենի
մը տեսնելով՝ եկաւ որ զուցէ անոր
վրայ բան մը գտնէ . ու երբոր ա֊
նոր քովը գնաց , տերեւներէն 'ի
զատ բան մը չգտաւ . ինչու որ դեռ
14 թուզի ատեն չէր . †ԵՒ պատաս֊
խան տուաւ ու ըսաւ անոր . Ասկէ
ետեւ մէկը քեզմէ պտուղ չուտէ
յաւիտեան . Եւ իր աշակերտները
լսեցին ։
15 էՈւ եկան Երուսաղէմ . և Յի֊
սուս տաճարը մտնելով՝ սկսաւ
դուրս հանել անոնք որ տաճարին
մէջ կը ծախէին ու կը գնէին . և
սատկ փոխողներուն սեղանները ,
ու աղաւնի ծախողներուն աթոռ֊
16 ները կործանեց . ԵՒ թող չէր
տար՝ որ մէկը տաճարին մէջէն ա֊
17 ման մը անցընէ ։ ԵՒ կը սորվե֊
ցընէր ու կ'ըսէր անոնց . Գրուած
չէ՞ որ՝ ըԻմ տունս աղօթքի տուն
պիտի կոչուի բոլոր ազգերուն ,
բայց թդուք ատիկայ աւազակնե֊
18 րու այր ըրիք ։ ժԵՒ դպիրները ու
քահանայապետները ասիկա լսելով՝ կը
փնտռէին թէ ինչպէս կորսընցընեն
զանիկայ , քանզի անկէ կը վախ֊
նային . ինչու որ իբոլոր ժողովուր֊
դը զարմացեր էր անոր վարդապե֊
19 տութեանը վրայ ։ Ու երբոր իրի֊
կուն եղաւ , քաղաքէն դուրս ելաւ ։
20 լԵՒ առտուանց երբոր անկէ
կ'անցնէին , թզենին տեսան ար֊
21 մատէն չորցած ։ Ու Պետրոսին
միտքը եկաւ ու ըսաւ անոր . Ռաբ֊
բի՛ աչա թզենին՝ որ անիծեցիր ,
22 չորցեր է ։ ԵՒ Յիսուս պատաս֊
խան տալով՝ ըսաւ անոնց . Աստու֊
23 ծոյ հաւատքը ունեցէ՛ք ։ Քանզի
խճշմարիտ կ'ըսեմ ձեզի . Ո՛վ որ
աս լեռանը ըսէ՝ Ելի՛ր ու ծովը ին֊
կի՛ր , և իր սրտին մէջը չերկմտի ,
հապա հաւատայ թէ ինչ որ ըսէ՝
կ'ըլլայ , պիտի ըլլայ անոր՝ ինչ որ
24 ըսէ ։ Ասոր համար կ'ըսեմ ձեզի .
ծԻնչ բան որ աղօթքով կը խընդ֊
րէք , հաւատացէ՛ք թէ պիտի առ֊
25 նէք , և պիտի ըլլայ ձեզի ։ Ու
երբոր աղօթքի կը կայնիք , կներե֊
ցէ՛ք թէ որ մէկուն դէմ բան մը
ունիք . որպէս զի ձեր Հայրն ալ՝
որ երկինքն է , ներէ ձեզի ձեր յան֊
26 ցանքները ։ հԻսկ թէ որ դուք չէք

Յամ Տեառն 33

ձ Մատ. իա. 23 ։ Ղու. ի. 1 ։
ղ Մատ. գ. 5 ։ ժդ. 5 ։ Գլ. զ. 20 ։
‡ Յուն. ունէին
ա Մատ. իա. 33 ։ Ղու. ի. 9 ։

ներեր , ձեր Հայրն ալ՝ որ երկինքն
է , պիտի չներէ ձեր յանցանքները ։
27 ԵՒ նորէն Երուսաղէմ եկան ,
ձՈւ երբոր տաճարին մէջ կը պտը֊
տէր , քահանայապետները և դը֊
պիրները ու ծերերը անոր եկան ,
28 Ու ըսին անոր . Ի՞նչ իշխանու֊
թիւնով կ'ընես աս բաները , և
ո՞վ տուաւ քեզի աս իշխանու֊
թիւնը , որ աս բաները ընես ։
29 Պատասխան տուաւ Յիսուս՝ ու ը֊
սաւ անոնց . Ես ալ ձեզի բան մը
հարցընեմ , ու դուք որ ինծի պա֊
տասխան տաք , ես ալ ձեզի պիտի
ըսեմ թէ ինչ իշխանութիւնով
30 կ'ընեմ աս բաները ։ Յովհաննէ֊
սին մկրտութիւնը երկինքէ՞ն էր՝
թէ մարդոցմէ , պատասխան տուէք
31 ինծի ։ ԵՒ անոնք մէջերնին կը
խորհէին՝ ու կ'ըսէին . Թէ որ ը֊
սենք՝ Երկինքէն , պիտի ըսէ . Հա֊
պա ինչո՞ւ չհաւատացիք անոր .
32 Իսկ թէ որ ըսենք՝ Մարդոցմէ . ժո֊
ղովուրդէն կը վախնային . ինչու
որ ղամէնքը ‡գիտէին Յովհաննէ֊
սը թէ ճշմարտապէս մարգարէ էր ։
33 ԵՒ պատասխան տալով՝ ըսին Յի֊
սուսին . Չենք գիտեր . և Յիսուս
պատասխան տուաւ՝ ու ըսաւ ա֊
նոնց . Ես ալ ձեզի չեմ ըսեր թէ
ինչ իշխանութիւնով կ'ընեմ աս
բաները ։

## ԳԼ. ԺԲ

1 Քրիստոս կը նախաձայնէ Հրէից մերժուիլը և հեթանոսաց կոչումը՝ ապերախտ մշակներուն ձեռքը յանձնուած այգիին առակովը . 13 պատասխան կու տայ՝ կայսրին հարկ տալու վրայով . 18 կը ցուցընէ սադուկեցւոց՝ իրենց մոլորութիւնը՝ յարութիւն չկայ ըսելնուն համար . 28 առաջին պատուիրանքին վրայով հարցընող դպիրին խնդիրը կը լուծէ . 35 կը ջրէ ան կարծիքը որ դպիրները ունէին Քրիստոսի վրայով . 38 և կը պատուիրէ ժողովրդոց որ զգուշ ըլլան անոնց փառասիրութենէն և կեղծաւորութենէն ։ 41 Քրիստոս կը գովէ երկու լումայ տուող աղքատ որբեւայրին ։

1 Ու աՍկսաւ առակներով խօսիլ
անոնց հետ՝ ու ըսել . Մէկ մարդ
մը այգի տնկեց , ու անոր բոլորտի֊
քը ցանց քաշեց , և ստորահնձան
փորեց , ու աշտարակ շինեց . և
զանիկայ մշակներու յանձնեց . ու
2 ինքը օտար երկիր մը գնաց ։ ԵՒ
ատենին ծառայ մը խրկեց մշակնե֊
րուն , որ մշակներէն այգիին պտու֊
3 ղէն առնէ ։ Իսկ անոնք բռնեցին՝
ծեծեցին զանիկայ , ու պարապ
4 ճամբեցին ։ Նորէն ուրիշ ծառայ
մըն ալ խրկեց անոնց . և զանիկայ
քարկոծելով՝ գլուխը վիրաւորեցին ,
5 ու անարգուած ճամբեցին ։ ԵՒ
դարձեալ ուրիշ մը խրկեց . ու զա֊
նիկայ սպաննեցին . և շատ ուրիշ֊
ներ ալ խրկեց , որոնց մէկ քանինե֊
րը ծեծեցին , ու մէկ քանիները

Յամի Տեառն
33

6 սպաննեցին ։ Ուստի մէկ սիրելի
որդի մըն ալ ունենալով , վերջա-
պէս զանիկայ ալ խրկեց անոնց՝ ը-
սելով . Գուցէ ամչնան իմ որդիէս ։
7 Բայց այն մշակները ըսին իրարու .
Ասիկայ է ժառանգը , եկէք զանի-
կայ սպաննենք , ու ժառանգու-
8 թիւնը մերը ըլլայ ։ Եւ բռնեցին
զանիկայ՝ ու սպաննեցին , և այգիէն
9 դուրս հանեցին ։ Ուստի այգիին
տէրը ի՞նչ պիտի ընէ . պիտի գայ՝
ու կորսնցընէ մշակները , և այգին
10 ուրիշներու պիտի տայ ։ Եւ աս
գիրը չէ՞ք կարդացեր թէ , բԱն
քարը որ շինողները անարգեցին ,
անիկայ անկիւնին գլուխը եղաւ .
11 Ասիկայ Տէրոջմէ եղաւ , և զարմա-
նալի է մեր աչքերուն ։
12 գԵւ կը փնտռէին՝ թէ ինչպէս
բռնեն զանիկայ , բայց ժողովուր-
դէն վախցան . քանզի իմացան որ
այն առակը իրենց համար ըսաւ . և
ձգեցին անիկայ ու գացին ։
13 դԵւ փարիսեցիներէն ու Հերով-
դեսեաններէն քանի մը հոգի խրկե-
ցին անոր , որ խօսքով բռնեն զա-
14 նիկայ ։ Եւ անոնք եկան՝ ու ըսին
անոր . Վարդապետ՝ գիտենք որ
ճշմարիտ ես , և մէկու մը համար
հոգդ չէ . քանզի մարդոց երես-
պաշտութիւն չես ըներ . հապա
ճշմարտութեամբ Աստուծոյ ճամ-
բան կը սորվեցընես . Կայսրին
տուրք տալ արժա՞ն է՝ թէ չէ .
15 տա՞նք՝ թէ չտանք ։ Եւ Յիսուս
գիտնալով անոնց կեղծաւորու-
թիւնը՝ ըսաւ անոնց . Ինչո՞ւ զիս
կը փորձէք , բերէք ինծի մէկ դա-
16 հեկան մը որ տեսնեմ ։ Եւ անոնք
բերին . ու ըսաւ անոնց . Որո՞ւնն
է աս պատկերը՝ ու գիրը . և անոնք
17 ըսին անոր . Կայսրին ։ Եւ Յիսուս
պատասխան տալով՝ ըսաւ անոնց .
Ան որ կայսրինն է՝ կայսրին տուէք ,
և ան որ Աստուծոյն է՝ Աստուծոյ
տուէք . ու զարմացան անոր վրայ ։
18 եԵւ անոր քովը եկան Սադուկե-
ցիները , որոնք կ'ըսեն թէ յարու-
թիւն չկայ , և անոր հարցուցին ը-
19 սելով . Վարդապետ՝ զՄովսէս մե-
զի գրեց որ եթէ մէկուն եղբայրը
մեռնի՝ ու կնիկը ձգէ , և զաւակ
չձգէ , անոր եղբայրը՝ առնէ անոր
կնիկը , և իր եղբօրը զաւակ հանէ ։
20 Արդ՝ եօթը եղբայրներ կային . և
առջինը կնիկ առաւ՝ ու մեռաւ , և
21 զաւակ չձգեց ։ Ու՝ երկրորդը առաւ
զանիկայ՝ ու մեռաւ , և ան ալ զա-
ւակ չձգեց . նոյնպէս ալ երրորդը ։
22 Ու եօթն ալ զանիկայ առին , և
զաւակ չձգեցին . ամենէն ետքը
23 կնիկն ալ մեռաւ ։ Ուրեմն յարու-
թեան ատենը՝ երբոր յարութիւն
առնեն , անոնցմէ որո՞ւն կնիկը պի-
տի ըլլայ . ինչու որ եօթն ալ զա-
24 նիկայ կնիկ ունեցան ։ Եւ Յիսուս
պատասխան տալով՝ անոնց ըսաւ .
Ատոր համար չէ՞ որ մոլորած էք ,
որ ո՛չ Գիրքը գիտէք , և ո՛չ Աստու-
25 ծոյ զօրութիւնը ։ Քանզի երբոր
մեռելներէն յարութիւն առնեն ,
ո՛չ կնիկ կ'առնեն , և ո՛չ էրկան կը
տրուին . հապա ըերկինքի հրեշտակ-
26 ներուն պէս են ։ Բայց մեռելնե-
րուն համար՝ թէ յարութիւն կ'առ-
նեն , Մովսէսին գրքին մէջը չէ՞ք
կարդացեր մորենիին վրայ , ինչպէս
Աստուած անոր խօսեցաւ՝ ըսելով .
թԵս եմ Աբրահամին Աստուածը , և
Իսահակին Աստուածը , ու Յակո-
27 բին Աստուածը ։ Անիկայ մեռել-
ներուն Աստուածը չէ , հապա կեն-
դանիներուն . ուրեմն դուք խիստ
մոլորած էք ։
28 ժԵւ դպիրներէն մէկը եկաւ , ու
մտիկ կ'ընէր անոնց՝ երբոր վիճա-
բանութիւն կ'ընէին , որ երբոր տե-
սաւ թէ աղէկ պատասխան տուաւ
անոնց , հարցուց անոր՝ ու ըսաւ .
Ո՞րն է բոլոր պատուիրանքներուն
29 առջինը ։ Եւ Յիսուս պատաս-
խանեց անոր . Բոլոր պատուիրանք-
ներուն առաջինը աս է . իԼսէ՛ ով
Իսրայէլ , մեր Տէր Աստուածը՝
30 մէկ Տէր մըն է . Եւ քու Տէր Ա-
տուածդ սիրես քու բոլոր սրտէդ ,
և քու բոլոր անձէդ , ու քու բոլոր
մտքէդ , և քու բոլոր զօրութենէդ .
ասիկայ է առաջին պատուիրանքը ։
31 Ու երկրորդը ասոր նման՝ լՔու ըն-
կերդ սիրես քու անձիդ պէս . ա-
սոնցմէ մեծ՝ ուրիշ պատուիրանք
32 չկայ ։ Եւ դպիրը ըսաւ անոր .
Աղէ՛կ վարդապետ , շիտակ խօսե-
ցար թէ Աստուած մէկ է , խև ան-
33 կէ 'ի զատ ուրիշ մը չկայ . Եւ բո-
լոր սրտէ , ու բոլոր մտքէ , և բոլոր
անձէ , ու բոլոր զօրութենէ անի-
կայ սիրելը , ու ընկերը իր անձին
պէս սիրելը՝ ծամէն ողջակէզներէ
34 ու զոհերէ աւելի է ։ Եւ Յիսուս
տեսնելով որ անիկայ խելացու-
թիւնով պատասխան տուաւ , ը-
սաւ անոր . Աստուծոյ թագաւո-
րութենէն հեռու չես . կԵւ ալ ու-
րիշ մէկը չէր համարձակեր անոր
բան մը հարցընելու ։
35 հԵւ Յիսուս երբոր տաճարին մէջ
կը սորվեցընէր , պատասխան տուաւ
ու ըսաւ . Դպիրները ինչո՞ւ կ'ը-
սեն , թէ Քրիստոս Դաւիթի որ-
36 դին է . Եւ ինքը Դաւիթ ձՍուրբ
Հոգիով կ'ըսէ . ՃՏէրը իմ Տէ-
րոջս ըսաւ . Նստէ՛ իմ աջ կողմս ,
մինչև որ քու թշնամիներդ ոտքե-
37 րուդ պատուանդան ընեմ ։ Ու-

Յամի Տեառն
33

բ Սաղ. ճժը. 22։
գ Մատ. իա. 45, 46։ Գղ. ժա. 18։ Յով. է. 25, 30, 44։
դ Մատ. իբ. 15։ Ղուկ. ի. 20։
ե Մատ. իբ. 23։ Ղուկ. ի. 27։
զ Գործ. իգ. 8։
է Օր. իե. 5։
ը Կորնթ. ժե. 42, 49, 52։
թ Ել. գ. 6։
ժ Մատ. իբ. 35։
ի Օր. զ. 4։ Ղուկ. ժ. 27։
լ Ղև. ժթ. 18։ Մատ. իբ. 39։ Հռով. ժգ. 9։ Գաղ. ե. 14։ Յակ. բ. 8։
խ Օր. դ. 39։ Եսայ. խե. 6, 14։ խզ. 9։
ծ Ա Թագ. ժե. 22։ Ովս. զ. 6։ Միք. զ. 6, 7, 8։
կ Մատ. իբ. 46։
հ Մատ. իբ. 41։ Ղուկ. ի. 41։
ձ Բ Թագ. իգ. 2։ Սաղ. ճժ. 1։

Ցամի Տեառն 33

րեմն Դաւիթ ինքը որ զանիկայ
Տէր կը կոչէ, ի՞նչպէս անիկայ
անոր որդին կ'ըլլայ. և ժողովուր-
դէն շատերը յօժարութեամբ մտիկ
կ'ընէին անոր։
38 ձ Եւ իր վարդապետութեանը մէջ
կ'ըսէր անոնց. յ Զգուշացէք դպ-
պիրներէն, որոնք կ'ուզեն փառա-
ւոր հանդերձներով պտըտիլ, և
յ շուկաներուն մէջ բարևներ ընդու-
39 նին, Ու ժողովարաններուն մէջ
առաջին աթոռները, և ընթրիք-
ներու մէջ առաջին բազմոցները։
40 ն Որոնք որբևարիներուն տուները
կ'ուտեն, ու յերկար երկնալու հա-
մար աղօթքը կ'երկընցընեն. ասոնք
աւելի դատապարտութիւն պիտի
ընդունին։
41 ն Եւ Յիսուս գանձանակին դի-
մացը նստած՝ կը նայէր թէ ինտո՞ր
ժողովուրդը ո գանձանակին մէջը
ստակ կը ձգէ. և շատ հարուստներ՝
42 շատ բան ձգեցին։ Մէկ աղքատ
որբևարի մըն ալ եկաւ՝ ու երկու
լումայ ձգեց, որ մէկ նաքարակիտ
43 մը կ'ընէ։ Եւ իր աշակերտները
իրեն կանչելով՝ ըսաւ անոնց. Ճըշ-
մարիտ կ'ըսեմ ձեզի, որ նաս աղ-
քատ որբևարին գանձանակը սոռ
ձգողներուն ամէնէն աւելի ձգեց.
44 Ինչու որ ամէնքը իրենց աւելցածէն
ձգեցին, բայց ասիկայ իր չքաւո-
րութենէն՝ ունեցածին բոլորը ձգեց՝
պ իր բոլոր ապրուստը։

ԳԼ. ԺԳ

1 Քրիստոս կը նախաձայնէ թէ տաճարը պիտի կործանի. 9 թէ աւետարանին համար հալածանքներ պիտի ըլլան. 14 թէ մեծամեծ թըշուառութիւններ պիտի գան Հրէից վրայ. 24 և թէ ինքը ի՛նչ կերպով դատաստանի պիտի գայ։ 32 Վերջին ժամը բնաւ մէկուն յայտնուած չըլլալուն համար՝ Քրիստոս կը պատուիրէ արթուն կենալ ու աղօթք ընել։

1 Ու ա երբոր տաճարէն դուրս կ'ել-
լէր, իր աշակերտներէն մէկը ը-
սաւ իրեն. Վարդապե՛տ նայէ ին-
տո՛ր քարեր են, և ինչ կերպ շէն-
2 քեր։ Եւ Յիսուս պատասխան տա-
լով ըսաւ անոր. Կը տեսնե՞ս աս
մեծ շէնքերը. բ Քար մը քարի վրայ
պիտի չմնայ՝ որ չքակուի։
3 Ու երբոր անիկայ Ձիթենեաց լե-
ռը տաճարին դիմացը նստեր էր,
Պետրոս ու Յակոբոս և Յովհան-
նէս ու Անդրէաս հարցուցին իրեն
4 առանձին. գ Ըսէ՛ մեզի ե՞րբ պիտի
ըլլան աս բաները, և ի՞նչ նշան
պիտի ըլլայ՝ աս ամէն բաներուն
5 կատարուելու ատենը։ Եւ Յի-
սուս պատասխան տուաւ անոնց՝ ու
սկսաւ ըսել. դ Զգո՛յշ կեցէք՝ չըլ-
6 լայ որ մէկը ձեզ խաբէ. Ինչու որ
շատերը պիտի գան իմ անունովս՝
ու ըսեն, թէ Ես եմ Քրիստոսը,
ու շատերը պիտի մոլորցընեն,
7 Բայց երբոր լսէք պատերազմներ և
պատերազմներու լուրեր, մի՛ խըռ-
ովիք, ինչու որ պէտք է ըլ-
8 լալ. բայց դեռ վերջը չէ։ Վասն
զի ազգ ազգի վրայ պիտի ելլէ,
ու թագաւորութիւն թագաւորու-
թեան վրայ, և տեղ տեղ երկրա-
շարժութիւններ պիտի ըլլան. սո-
վեր՝ ու խռովութիւններ ալ պիտի
ըլլան. ե ասոնք ցաւերուն սկիզբներն
9 են։ Զգուշացէ՛ք ձեր անձերուն,
քանզի զ ձեզ ատեաններու պիտի
մատնեն, ու ժողովարաններուն մէջ
ձեզ պիտի ծեծեն, և իմ անուանս
համար կուսակալներու ու թագա-
ւորներու առջև պիտի կենաք՝ ա-
նոնց վկայութիւն ըլլալու համար.
10 Եւ է առաջ պէտք է որ աւետարանը
11 քարոզուի բոլոր ազգերուն։ ը Բայց
երբոր ձեզ մատնելու տանին, ա-
ռաջուց հոգ մի՛ ընէք և մի՛ մը-
տածէք թէ ինչ պիտի խօսիք.
հապա ան ժամուն ինչ որ ձեզի
տրուի, անիկայ խօսեցէք. ինչու
որ չէ՛ թէ դուք էք որ կը խօսիք,
12 թ հապա Հոգին Սուրբ։ Ու ժ եղ-
բայր՝ եղբայրը մահուան պիտի
մատնէ, և հայրը՝ որդին. և որդիք
ծնողաց դէմ պիտի ելլեն՝ ու ծնողացը
13 ու մեռցընեն զանոնք։ ի Եւ իմ ա-
նուանս համար ամենուն ատելի պի-
տի ըլլաք. բայց լ ով որ մինչև վեր-
ջը համբերէ, անիկայ պիտի ապրի։
14 խ Ու երբոր տեսնէք աւերմունքին
պղծութիւնը՝ որ Դանիէլ մարգա-
րէին ձեռքովը ըսուած է, թէ ար-
ժան չեղած տեղը կը կենայ. (ծ ով
որ կարդայ՝ թող հասկընայ.) ան
ատենը կ Հրէաստանի մէջ եղողները՝
15 լեռները թող փախչին. Եւ ան
որ տանիքին վրայ է՝ թող տուն
չիջնէ՝, ու չմտնէ իր տունէն բան
16 մը առնելու. Եւ ան որ արտին մէջն
է՝ թող ետ չդառնայ իր հանդերձը
17 առնելու։ հ Բայց վա՜յ ան օրերը յղի
եղողներուն ու ծիծ տուողներուն։
18 Եւ աղօթք ըրէք՝ որ ձեր փախչիլը
19 ձմեռը չըլլայ. ձ Քանզի ան օրերը
անանկ նեղութիւն պիտի ըլլայ,
որուն նմանը Աստուծոյ ստեղծած
արարածոց սկիզբէն մինչև հիմա ե-
20 ղած չէ, ո՛չ ալ պիտի ըլլայ։ Եւ
թէ որ Տէրը ան օրերը չկարճեցը-
նէր, բնաւ մէկ մարմին մը պի-
տի չապրէր. բայց ընտրեալներուն
համար՝ որոնք ընտրեց, ան օրե-
21 րը կարճեցուց։ Եւ ղ ան ատենը
թէ որ մէկը ձեզի ըսէ, Ահա հոս
է Քրիստոսը՝ կամ ահա՛ հոն,
22 մի՛ հաւատաք. Ինչու որ սուտ
քրիստոսներ և սուտ մարգարէներ
պիտի ելլեն, ու նշաններ և հրաշք-

Ցամի Տեառն 33

ձ Գղ. դ. 2։
յ Մատ. իգ. 1։ Ղու. ի. 46։
յ Ղու. ժա. 43։
ն Մատ. իգ. 14։
ն Ղու. իա. 1։
ո դ Թագ. ժբ. 9։
ն Ր Կոր. ը. 12։
պ Օր. իդ. 6։ ա Յով. դ. 17։
ա Մատ. իդ. 1։ Ղու. իա. 5։
բ Ղու. ժթ. 44։
գ Մատ. իդ. 3։ Ղու. իա. 7։
դ Երեմ. իթ. 8։ Եփե. ե. 6։ ա Թես. բ. 3։
ե Մատ. իդ. 8։
զ Մատ. ժ. 17, 18։ իդ. 9։ Յայտ. բ. 10։
է Մատ. իդ. 14։
ը Մատ. ժ. 19։ Ղու. ժբ. 11։ իա. 14։
թ Գործ. բ. 4։ դ. 8. 31։
ժ Միք. է. 6։ Մատ. ժ. 21։ իդ. 10։ Ղու. իա. 16։
ի Մատ. իդ. 9։ Ղու. իա. 17։
լ Դան. ժբ. 12։ Մատ. ժ. 22։ իդ. 13։ Յայտ. բ. 10։
խ Մատ. իդ. 15։
ծ Դան. թ. 27։
կ Ղու. իա. 21։
հ Ղու. իա. 23։ իդ. 29։
ձ Դան. թ. 26։ ժբ. 1։ Յովել. բ. 2։ Մատ. իդ. 21։
ղ Մատ. իդ. 23։ Ղու. ժէ. 23։ իա. 8։

Ցամք Տեառն 33

ներ պիտի ցուցընեն , որ եթէ կա-
րելի էր՝ ընտրեալներն ալ մոլոր-
23 ցընեն ։ Իսկ ՙդուք զգոյշ կե-
ցէք , ահա առաջուց ըսի ձեզի
ամէնը ։
24 ժ Բայց այն օրերը այն նեղութենէն
ետեւ՝ արեգակը պիտի խաւարի , ու
25 լուսինը իր լոյսը պիտի չտայ . Եւ
աստղերը երկինքէն պիտի թափ-
թըփին , ու երկնից մէջի զօրու-
26 թիւնները պիտի շարժին ։ յԵւ այն
ատենը պիտի տեսնեն Որդին մար-
դոյ ամպերու մէջ եկած , մեծ զօ-
27 րութիւնով ու փառքով ։ Եւ այն
ատենը իր հրեշտակները պիտի
խրկէ , ու իր ընտրեալները պիտի
ժողվէ չորս հովերէն՝ երկրի ծայրէն
28 մինչեւ երկինքի ծայրը ։ նԹզենիէն
առակ մը սորվեցէք . որ երբ անոր
ոստերը կը կակուղնան , ու տերեւ-
ները կը ցցուին , գիտէք թէ ա-
29 մառը մօտ է ։ Նոյնպէս ալ դուք
երբոր աս բաները եղած տեսնէք ,
գիտցէք որ մօտ է դռներուն քովը ։
30 Ճշմարիտ կ՚ըսեմ ձեզի , որ աս
ազգը պիտի չանցնի , մինչեւ որ աս
31 ամէն բաները ըլլան ։ Երկինքը
ու երկիրը պիտի անցնին , բայց
ւ իմ խօսքերս բնաւ պիտի չանցնին ։
32 Իսկ այն օրուան ու ժամուն համար՝
մէկը չգիտեր , ո՛չ երկինքի մէջ
եղող հրեշտակները , և ո՛չ Որ-
33 դին , հապա միայն Հայրը ։ ոԶգ-
գո՛յշ կեցէք , արթո՛ւն մնացէք , և
աղօ՛թք ըրէք . ինչու որ չէք գիտեր
34 ատենը երբ է . ւԻնչպէս օտար եր-
կիր գացող մարդ մը իր տունը կը
թողու , ու իր ծառաներուն իշ-
խանութիւն կու տայ , և ամէն մէ-
կուն իր գործը . ու դռնապանին
35 կ՚ապսպրէ որ արթուն կենայ . Ու-
րեմն ղարթո՛ւն կեցէք . ինչու որ
չէք գիտեր թէ երբ կու գայ տա-
նուտէրը , իրիկունը՝ թէ կէս գի-
շերին՝ թէ հաւախօսին՝ և թէ առ-
36 տուանց . Չըլլայ որ յանկարծակի
գայ՝ ու ձեզ քունի մէջ գտնէ ։
37 Եւ ինչ որ կ՚ըսեմ ձեզի , ամենուն
կ՚ըսեմ . Արթո՛ւն կեցէք ։

ՙ Բ Պետ. գ. 17։
ժ Դան. է. 10 ։ Սոփ. ա. 15 ։ Մատ. իդ. 29 ։ Ղու. իա. 25 ։
յ Դան. է. 13 . 14 ։ Մատ. ժզ. 27 ։ իդ. 30 ։ Գծ. ժդ. 62 ։ Գործ. ա. 11 ։ ա Թես. դ. 15 ։ բ Թես. ա. 7 . 10 ։ Յայտ. ա. 7 ։
ն Մատ. իդ. 32 ։ Ղու. իա. 29 ։
ւ Եբ. ա. Տ ։
ո Մատ. իդ. 42 ։ իե. 13 ։ Ղու. ժբ. 40 ։ իա. 34 ։ Հռով. ժգ. 11 ։ ա Թես. ե. 6 ։
ւ Մատ. իդ. 45 ։ իե. 14 ։
ղ Մատ. իդ. 42 . 44 ։

## ԳԼ. ԺԴ

1 Հրէից դաւաճանութիւնը Քրիստոսի դէմ ։ 3 Կին մը անոր գլխուն վրայ կը թափէ շիշ մը պատուական եղ ։ 10 Յուդան իր Տէրը կը ծախէ ստակով ։ 18 Քրիստոս կը ծանուցանէ թէ իր աշակերտներէն մէկը զինքը պիտի մատնէ ։ 22 Զատիկը պատրաստուելէն և ուտուելէն ետեւ , Քրիստոս հաղորդութեան խորհուրդը կը սահմանէ . 26 կը նախաձայնէ իր բոլոր աշակերտներուն ցրուիլը , և Պետրոսի ուրացութիւնը ։ 43 Յուդա համբուրելով կը մատնէ զՔրիստոս ։ 46 Քրիստոս պարտէզին մէջ կը բռնուի , 55 սուտ վկաներէն կ՚ամբաստանուի , և ամբարիշտ վճռով կը դատապարտուի Հրէից ատեանէն ։ 65 Հըրէայք անարգանօք կը չարչարեն զՔրիստոս ։ 66 Պետրոս իրեք անգամ կ՚ուրանայ իր Տէրը ։

1 Եւ աԵրկու օրէն ետեւ զատիկ ու
բաղարջակերք էր . և քահա-
նայապետները ու դպիրները կը
փնտռէին թէ ինչպէս նենգու-
թեամբ բռնեն զանիկայ՝ ու մեռ-
2 ցընեն ։ Բայց կ՚ըսէին թէ ։ Ո՛չ
տօնիս մէջ , որ ժողովուրդին
մէջ խռովութիւն չըլլայ ։
3 բՈւ երբոր ինքը Բեթանիա էր
բորոտ Սիմոնին տունը սեղան նըս-
տած , կնիկ մը եկաւ՝ որ շիշ մը
պատուական սուղ նարդոսի եղ
ունէր , և կոտրեց այն շիշը՝ ու անոր
4 գլխուն վրայ թափեց ։ Եւ կային
ոմանք որ կը դժուարէին ու կ՚ը-
սէին . Ինչո՞ւ համար եղաւ աս
5 եղին կորուստը . Քանզի աս եղը
իրեք հարիւր դահեկանէն աւելի
կրնար ծախուիլ ու աղքատներուն
տրուիլ . և սաստիկ կը յանդի-
6 մանէին զանիկայ ։ Բայց Յիսուս
ըսաւ . Թո՛ղ տուէք ասոր . ինչո՞ւ
անհանգիստ կ՚ընէք ասիկայ . բա-
7 րի գործ մը գործեց ինծի ։ գԻն-
չու որ աղքատները ամէն ատեն
ձեր հետը ունիք , ու երբոր ուզէք՝
կրնաք անոնց բարիք ընել . բայց
8 զիս ամէն ատեն չունիք ։ Ասիկայ
ինչ որ ունէր՝ ըրաւ . առաջուց իմ
մարմինս օծեց՝ իմ թաղմանս հա-
9 մար . Ճշմարիտ կ՚ըսեմ ձեզի , թէ
բոլոր աշխարհի մէջ՝ ուր որ աս
աւետարանս քարոզուի , պտոր
ըրածն ալ պիտի խօսուի իրեն յի-
շատակ ըլլալու համար ։
10 դԵւ Յուդա Իսկարիովտացին
տասուերկուքէն մէկը՝ գնաց քա-
հանայապետներուն , որ զանիկայ
11 մատնէ անոնց ։ Անոնք ալ լսելով՝
ուրախացան , ու իրեն ստակ տալ
խոստացան . և կը փնտռէր՝ թէ
ինչպէս պատեհութիւնով մը մատ-
նէ զանիկայ ։
12 եԵւ բաղարջակերաց առջի օրը՝,
որ զատիկը կը մորթէին , անոր
աշակերտները ըսին իրեն . Ո՞ւր
կ՚ուզես երթանք պատրաստենք՝ որ
13 զատիկը ուտես ։ Եւ իր աշա-
կերտներէն երկուքը խրկեց , ու
ըսաւ անոնց . Գացէ՛ք քաղաքը ,
ու ձեզի մարդ մը պիտի պատահի ,
որ սափոն վրայ ջուրի սափոր մը կը
14 տանի . գացէ՛ք անոր ետեւէն . Եւ
ո՛ւր որ մտնէ , տանը տիրոջը ը-
սէ՛ք . Վարդապետը կ՚ըսէ . Ո՞ւր է
օթեւանը՝ որ հոն աշակերտներուս
հետ մէկտեղ զատիկը ուտեմ ։
15 Ան ալ ձեզի զարդարուած ու
պատրաստ մեծ վերնատուն մը պի-
տի ցուցընէ . Հոն պատրաստեցէք

Ցամք Տեառն 33

ա Մատ. իզ. 2 ։ Ղու. իբ. 1 ։ Յով. ժա. 55 ։ ժբ. 1 ։
բ Մատ. իզ. 6 ։ Յով. ժբ. 1 . 3 ։ Տես Ղու. է. 37 ։
գ Օր. ժե. 11 ։
դ Մատ. իզ. 14 ։ Ղու. իբ. 3 . 4 ։
ե Մատ. իզ. 17 ։ Ղու. իբ. 7 ։

Յամի Տեառն
33

16 մեզի ։ Եւ իր աշակերտները գա-
ցին, ու քաղաքը մտան, և ինչպէս
որ իրենց ըսաւ՝ այնպէս գտան. և
զատիկը պատրաստեցին ։
17 դՈւ երբոր իրիկուն եղաւ՝ տա-
սներկուքին հետ մէկտեղ եկաւ ։
18 Ու երբոր սեղան նստան և կ'ու-
տէին, ըսաւ Յիսուս. Ճշմարիտ
կ'ըսեմ ձեզի, որ ձեզմէ մէկը որ
հիմա իմ հետս կ'ուտէ, զիս պիտի
19 մատնէ ։ Եւ անոնք սկսան տրտը-
միլ, ու մէկիկ մէկիկ ըսել անոր.
Միթէ ե՞ս եմ, և ուրիշ մը՝ Միթէ
20 ե՞ս եմ ։ Անիկայ պատասխան
տուաւ ու ըսաւ անոնց. Աս տա-
սներկուքէդ մէկը՝ որ ինծի հետ իր
21 ձեռքը պնակը խոթեց ։ Յիրաւի
եՈրդին մարդոյ կ'երթայ՝ ինչպէս
որ գրուած է իրեն համար. բայց
վա՜յ ան մարդուն՝ որուն ձեռքովը
Որդին մարդոյ կը մատնուի. աղէկ
էր ան մարդուն որ ծնած չըլլար ։
22 զԵւ քանի որ անոնք կ'ուտէին,
Յիսուս հաց առաւ՝ օրհնեց ու
կտրեց, և տուաւ անոնց՝ ու ըսաւ.
23 *Առէ՛ք, աս է իմ մարմինս ։ էԵւ
դաւաթը առաւ՝ գոհացաւ, ու
տուաւ անոնց. և ամէնքն ալ խը-
24 մեցին անկէ ։ Ու ըսաւ անոնց.
Ասիկայ է իմ արիւնս նոր ուխտի,
որ շատերու համար կը թափուի ։
25 Ճշմարիտ կ'ըսեմ ձեզի. ասկէ
ետեւ որթին բերքէն բնաւ պիտի
չխմեմ մինչև ան օրը՝ երբոր անիկայ
նոր խմեմ Աստուծոյ թագաւորու-
թեանը մէջ ։
26 ըԵւ օրհնութիւն մը երգելէն ե-
27 տեւ՝ Ձիթենեաց լեռը ելան ։ թԵւ
Յիսուս ըսաւ անոնց. Ամէնքդ ալ
աս գիշեր իմ վրայովս պիտի գայ-
թակղիք. ինչու որ գրուած է թէ
ժՀովիւը պիտի զարնեմ, ու
28 ոչխարները պիտի ցրուին ։ Բայց
իյարութիւն առնելէս ետեւ՝ ձեզմէ
առաջ Գալիլեա պիտի երթամ ։
29 լԻսկ Պետրոս ըսաւ անոր. Թէպէտ
ամէնքն ալ գայթակղին, բայց չէ
30 թէ ես ։ Եւ Յիսուս ըսաւ անոր.
Ճշմարիտ կ'ըսեմ քեզի, որ դուն
ալ աս գիշեր դեռ հաւը երկու
անգամ չխօսած, երեք անգամ
31 զիս պիտի ուրանաս ։ Բայց Պետրոս
աւելի կը պնդէր՝ ու կ'ըսէր. Թէև
քեզի հետ մեռնիլ պէտք ըլլայ ին-
ծի, բնաւ քեզ պիտի չուրանամ.
Նոյնպէս կ'ըսէին ամէնքն ալ ։
32 խԵկան ան տեղը՝ որուն անունը
Գեթսեմանի էր, ու ըսաւ իր ա-
շակերտներուն. Հոս նստեցէք՝
33 մինչև որ ես աղօթք ընեմ ։ Եւ իր
հետը առնելով Պետրոսը ու Յա-
կոբոսը և Յովհաննէսը, սկսաւ
34 խռովիլ և վշտանալ ։ Ան ատենը

դ Մատ. իզ. 20 ։
ե Մատ. իզ. 24 ։ Ղու. իբ. 22 ։
զ Մատ. իզ. 26 ։ Ղու. իբ. 19 ։ ա Կոր. ժա. 23 ։
* Ոմանք՝ Առէ՛ք կերէ՛ք ։
ը Մատ. իզ. 30 ։
թ Մատ. իզ. 31 ։
ժ Զաք. ժգ. 7 ։
ի Գլ. ժզ. 7 ։
լ Մատ. իզ. 33, 34 ։ Ղու. իբ. 33, 34 ։ Յով. ժգ. 37, 38 ։
խ Մատ. իզ. 36 ։ Ղու. իբ. 39 ։ Յով. ժը. 1 ։

ըսաւ անոնց. Իմ անձս մեռնելու
չափ տրտում է. հո՛ս կեցէք՝ և
35 արթո՛ւն մնացէք ։ Ու քիչ մը ա-
ռաջ երթալով, իր երեսին վրայ
գետինը ինկաւ, և աղօթք ըրաւ,
որ եթէ կարելի է՝ ան ժամը իրմէ
36 անցնի ։ Եւ ըսաւ. կԱբբա՛ Հայր,
համէն բան քեզի հնարաւոր է, աս
գաւաթը ինծմէ անցուր. ձբայց
չէ թէ ինչպէս որ ես կ'ուզեմ,
հապա ինչպէս որ դուն կ'ուզես ։
37 Եւ եկաւ՝ ու զանոնք քնացած գը-
տաւ, և ըսաւ Պետրոսին. Սիմո՛ն
կը քնանա՞ս. չկրցա՞ր ժամ մը
38 արթուն կենալ ։ Արթո՛ւն կե-
ցէք՝ և աղօթք ըրէք, որ փորձու-
թեան մէջ չմտնէք. ղհոգին յօժար
39 է, բայց մարմինը տկար ։ Եւ
նորէն գնաց աղօթք ըրաւ, նոյն
40 խօսքը ըսելով ։ Եւ դարձաւ՝ ու
զանոնք նորէն քնացած գտաւ.
ինչու որ աչքերնին ծանրացած էր,
և չէին գիտեր թէ ինչ պատաս-
41 խան տան անոր ։ Երրորդ անգամ
ալ եկաւ, ու ըսաւ անոնց. Ասկէ
ետեւ քնացէ՛ք ու հանգչեցէ՛ք.
բաւական է, ճժամը հասաւ. ահա
Որդին մարդոյ մեղաւորներուն
42 ձեռքը կը մատնուի. մԵլէք
երթանք, ահա՛ մօտեցաւ անիկայ՝
որ զիս պիտի մատնէ ։
43 յԵւ դեռ անիկայ ասիկա որ կը խօ-
սէր, իսկոյն Յուդան՝ տասներ-
կուքէն մէկը եկաւ, և իր հետը
քահանայապետներուն և դպիրնե-
րուն ու ծերերուն կողմէն շատ
բազմութիւն՝ սուրերով ու բիրե-
44 րով ։ Եւ զանիկայ մատնողը անոնց
նշան մը տուեր էր՝ ըսելով. Ո՛վ որ
ես համբուրեմ՝ ան է, բռնեցէք
անիկայ՝ և զգուշութեամբ տարէ՛ք ։
45 Ու անիկայ գալով շուտ մը մօտե-
ցաւ անոր՝ և ըսաւ, Ռա՛բբի՝
Ռա՛բբի, ու համբուրեց զանիկայ ։
46 Եւ անոնք իրենց ձեռքերը անոր
վրայ ձգեցին՝ ու բռնեցին զանի-
47 կայ ։ Եւ քովը կայնողներէն մէկը
սուրը քաշեց՝ ու զարկաւ քահա-
նայապետին ծառային, ու անոր
48 ականջը մէկդի հանեց ։ Եւ Յիսուս
պատասխան տալով ըսաւ անոնց.
նԻբր թէ աւազակի՞ վրայ ելաք՝
սուրերով ու բիրերով զիս բռնե-
49 լու. Ամէն օր ձեր քովն էի, ու
տաճարին մէջ կը սորվեցնէի, և
զիս չբռնեցիք. բայց որպէս զի
50 շգիրքերը կատարուին ։ ոԱն ա-
տենը բոլոր աշակերտները թողուցին
51 զանիկայ ու փախան ։ Եւ մէկ երի-
տասարդ մը անոր ետեւէն կ'երթար՝
մերկ մարմնին վրայ կտաւ մը ա-
ռած. ու երիտասարդները զա-
52 նիկայ բռնեցին. Ան ալ կտաւը

Յամի Տեառն
33

ծ Յով. ժբ. 27 ։
կ Հռով. ը. 15 ։ Գաղ. դ. 6 ։
հ Եբր. ե. 7 ։
ձ Յով. ե. 30 ։ զ. 38 ։
ղ Հռով. է. 22, 23 ։ Գաղ. ե. 17 ։
ճ Յով. ժգ. 1 ։
մ Մատ. իզ. 46 ։ Յով. ժը. 1, 2 ։
յ Մատ. իզ. 47 ։ Ղու. իբ. 47 ։ Յով. ժը. 3 ։
ն Մատ. իզ. 55 ։ Ղու. իբ. 52 ։
շ Սաղ. իբ. 6 ։ Եսա. ծգ. 7, և ։ Ղու. իբ. 37 ։ իդ. 44 ։
ո Սաղ. ձը. 8 ։ Հմր 27 ։

Ճամ. Տեառն 33

թողուց՝ ու մերկ փախաւ անոնցմէ ։
53 ղԵւ տարին Յիսուսը քահանայապետին . ու անոր քովը ժողվուեցան բոլոր քահանայապետնե-
54 րը, և ծերերը ու դպիրները ։ Եւ Պետրոս հեռուանց անոր ետեւէն գնաց մինչև ներսը քահանայապետին գաւիթը, և սպասաւորներուն հետ նստաւ, ու վառած կրակին
55 քովը կը տաքնար ։ ՆԻսկ քահանայապետները ու բոլոր ժողովքը Յիսուսի դէմ վկայութիւն կը փնտռէին որ զանիկայ մեռցնեն,
56 և չէին գտներ . Ինչու որ շատերը սուտ վկայութիւն կը վկայէին անոր դէմ, ու վկայութիւնները իրարու
57 համաձայն չէին ։ Եւ ոմանք ելան սուտ վկայութիւն կ'ընէին անոր
58 դէմ՝ ու կ'ըսէին, Թէ մենք լսեցինք ատկէ՝ որ կ'ըսէր . օԵս աս ձեռագործ տաճարը պիտի քակեմ, և իրեք օրուան մէջ ուրիշ մը պիտի
59 շինեմ առանց ձեռագործի ։ Բայց անանկ ալ իրենց վկայութիւնը
60 համաձայն չէր ։ Եւ աքահանայապետը մէջտեղը ոտք ելլելով, հարցուց Յիսուսին՝ ու ըսաւ . Պատասխան մը չե՞ս տար . ի՞նչ կը
61 վկայեն ասոնք քեզի դէմ ։ Բայց ՃԱնիկայ լուռ կը կենար, և պատասխան մը չէր տար . բքահանայապետը նորէն կը հարցնէր անոր՝ ու կ'ըսէր . Դո՞ւն ես Քրիստոսը՝
62 օրհնեալ Աստուծոյ Որդին ։ Եւ Յիսուս ըսաւ, Ես եմ . ու րպիտի տեսնէք Որդին մարդոյ Զօրութեան աջ կողմը նստած, ու երկնից
63 նից ամպերովը եկած ։ Եւ քահանայապետը իր հանդերձները պատռեց՝ ու ըսաւ . Ալ ի՞նչ պէտք է
64 մեզի վկաներ ։ Աստուծոյ հայհոյութիւնը լսեցիք . ձեզի ի՞նչպէս կ'երեւնայ . և ամէնքը դատապարտեցին զանիկայ՝ թէ մահապարտ է ։
65 յԵւ ոմանք սկսան թքնել անոր, ու երեսը ծածկել, և բռունցքով ծեծել ու ըսել . Մարգարէացիր . ու սպասաւորները ապտակ կը զարնէին անոր ։
66 Եւ Պետրոս վարը գաւիթն էր, ու քահանայապետին աղախիննե-
67 րէն մէկը եկաւ, Ու տեսնելով Պետրոսը որ կը տաքնար, նայեցաւ անոր՝ ու ըսաւ . Դուն ալ Յիսուս
68 Նազովրեցիին հետն էիր ։ Բայց անիկայ ուրացաւ՝ ու ըսաւ . Չեմ գիտեր և չեմ հասկընար՝ թէ դուն ինչ կը խօսիս . ու երբոր դուրս ելաւ՝ գաւիթին դրանը առջևը,
69 հաւը խօսեցաւ ։ Եւ աղախինը նորէն տեսաւ զանիկայ, ու սկսաւ բոլորտիքը կայնողներուն ըսել թէ,
70 Աս ալ անոնցմէ է . Եւ անիկայ նորէն ուրացաւ ։ էՔիչ մը ատենէն ետքը՝ նորէն բոլորտիքը կայնողները ըսին Պետրոսին . Ճիրաւի դուն ալ անոնցմէ ես . +ինչու որ Գալիլեացի ես, և քու զրու-
71 ցուածքդ ալ նման է անոնց ։ Բայց անիկայ սկսաւ անիծել ու երդում ընել՝ ըսելով թէ, Ես աս մարդը չեմ ճանչնար, որուն համար դուք
72 կ'ըսէք ։ Եւ իսկոյն երկրորդ անգամ հաւը խօսեցաւ . ու Պետրոս միտքը բերաւ ան խօսքը՝ որ Յիսուս իրեն ըսեր էր թէ, Դեռ հաւը երկու անգամ չխօսած՝ դուն իրեք անգամ պիտի ուրանաս զիս . ու սկսաւ լալ ։

## ԳԼ. ԺԵ

1 Յիսուս կապուած կը տարուի Պիղատոսին առջևը՝ և կ'ամբաստանուի ։ 15 Պիղատոս ժողովուրդին մեծ աղաղակին նայելով՝ մարդասպան Բարաբբան կ'արձակէ, և Յիսուսը ձեռք կու տայ որ խաչուի ։ 17 Փուշերէ պսակ մը կը դնեն Յիսուսի գլուխը . 19 անոր երեսը կը թքնեն և զանիկայ ծաղր կ'ընեն . 27 խաչը կը հանեն երկու չարագործներուն մէջտեղը . 29 Հրէայք սաստիկ նախատինքներ կու տան անոր . 39 բայց հարիւրապետը կը խոստովանի թէ անիկայ Աստուծոյ որդին է ։ 43 Յովսէփ պատուով կը թաղէ զՅիսուս ։

1 Եւ ասառաւօտուանց շուտ մը քահանայապետները ծերերուն ու դպիրներուն հետ՝ և բոլոր ժողովքն ալ խորհուրդ ըրին, Յիսուսը կապեցին՝ ու տարին մատնեցին Պի-
2 ղատոսին ։ Եւ բՊիղատոս հարցուց անոր՝ ու ըսաւ . Դո՞ւն ես Հրէից Թագաւորը . անիկայ ալ պատասխան տալով ըսաւ անոր . Դուն
3 կ'ըսես ։ Եւ քահանայապետները շատ ամբաստանութիւն կ'ընէին
4 անոր վրայով ։ գՈւ Պիղատոս նորէն հարցուց անոր՝ ըսելով . Պատասխան մը չե՞ս տար, Նայէ որ-
5 չափ քեզի դէմ կը վկայեն ։ դԵւ Յիսուս տակաւին պատասխան մը չտուաւ, մինչև որ Պիղատոս զարմացաւ ։
6 Բայց ետօնին ատենը կապուած մը կ'արձակէր անոնց, որը որ ի-
7 րենք ուզէին ։ Եւ մէկ կար որուն անունը Բարաբբա էր, խռովարարներուն հետը կապուած, որոնք խռովութեան ատենը մարդասպա-
8 նութիւն ըրեր էին ։ Եւ ժողովուրդը աղաղակելով՝ սկսաւ խնդրել որ ընէ ինչպէս որ միշտ կ'ընէր
9 իրենց ։ Եւ Պիղատոս անոնց պատասխան տուաւ ու ըսաւ . Կ'ուզէ՞ք որ Հրէից Թագաւորը արձա-
10 կեմ ձեզի ։ Քանզի գիտէր որ քահանայապետները նախանձի հա-
11 մար մատներ էին զանիկայ ։ զԲայց քահանայապետները ժողովուրդը գրգռեցին որ խնդրեն յաւէտ Բա-

Ճամ. Տեառն 33

ղ Մատ. իզ. 57 ։ Ղու. իբ. 54 ։ Յով. ժը. 13 ։
Ճ Մատ. իզ. 59 ։
ա Գլ. ժե. 29 ։ Յով. բ. 19 ։
բ Մատ. իզ. 62 ։
Ճ Ես. ծգ. 7 ։ բ Մատ. իզ. 63 ։
ր Մատ. իդ. 30 ։ իզ. 64 ։ Ղու. իբ. 69 ։
յ Մատ. իզ. 58. 69 ։ Ղու. իբ. 55 ։ Յով. ժը. 16 ։
ա Մատ. իզ. 71 ։ Ղու. իբ. 58 ։ Յով. ժը. 25 ։
է Մատ. իզ. 73 ։ Ղու. իբ. 59 ։ Յով. ժը. 26 ։
+ Գործ. բ. 7 ։
Ց Մատ. իզ. 75 ։
ա Սաղ. բ. 2 ։ Մատ. իէ. 1 ։ Ղու. իբ. 66 ։ իգ. 1 ։ Յով. ժը. 28 ։ Գործ. գ. 13 ։ դ. 26 ։
բ Մատ. իէ. 11 ։
գ Մատ. իէ. 13 ։
դ Ես. ծգ. 7 ։ Յով. ժթ. 9 ։
ե Մատ. իէ. 15 ։ Ղու. իգ. 17 ։ Յով. ժը. 39 ։
զ Մատ. իէ. 20 ։ Գործ. գ. 14 ։

Յամի Տեառն 33

12 րաբբան իրենց արձակել ։ Նորէն
Պիղատոս պատասխան տուաւ՝ ու
ըսաւ անոնց . Հապա Հրէից Թա-
գաւոր ըսածնիդ ի՞նչ կ՚ուզէք որ
13 ընեմ . ։ Եւ անոնք նորէն կ՚աղա-
ղակէին , Խաչը հանէ ատիկայ ։
14 Պիղատոս ըսաւ անոնց . Բայց ի՞նչ
չար գործ ըրած է ատիկայ . և ա-
նոնք՝ ալ աւելի կ՚աղաղակէին ...
15 Խաչը հանէ ատիկայ ։ Եւ
Պիղատոս ժողովուրդը գոհ ընել
ուզելով՝ Բարաբբան արձակեց ա-
նոնց , ու Յիսուսը ծեծելով՝ ձեռք
տուաւ որ խաչուի ։
16 Եւ զինուորները ներս տարին
զանիկայ գաւիթը՝ այսինքն պալա-
տը . և բոլոր գունդը մէկտեղ
17 կանչեցին . Ու հագցուցին անոր
ծիրանիներ , և փշեղէն պսակ հիւ-
18 սելով՝ անոր գլուխը դրին . Ու
սկսան բարև տալ անոր՝ ... ըսել .
Ողջոյն քեզ՝ Հրէից Թագաւոր ։
19 Եւ անոր գլուխը եղեգով կը ծե-
ծէին , ու կը թքնէին անոր , և
ծնկան վրայ գալով՝ երկրպագու-
20 թիւն կ՚ընէին անոր ։ Ու երբոր
ծաղր ըրին զանիկայ , ծիրանիները
վրայէն հանեցին , և իր հանդերձ-
ները հագցուցին անոր , ու դուրս
հանեցին զանիկայ՝ որ խաչը հանեն ։
21 Եւ Սիմոն Կիւրենացին՝ Աղէք-
սանդրոսին և Ռուփոսին հայրը , որ
անկէ կ՚անցնէր արտէն եկած , պա-
հակ բռնեցին որ անոր խաչը վեր-
22 ցընէ ։ Ու տարին անիկայ Գող-
գոթա ըսուած տեղը , (որ կը
23 թարգմանուի՝ Գանկի տեղ .) Եւ
անոր զմուռսով խառնած գինի
տուին՝ որ խմէ , բայց ինք չառաւ .
24 Ու խաչը հանեցին զանիկայ . և
անոր հանդերձները բաժնեցին , ա-
նոնց վրայ վիճակ ձգելով՝ թէ ո՛վ
25 ինչ պիտի առնէ ։ Ժամը իրեքն
էր , ու խաչը հանեցին անիկայ ։
26 Եւ անոր յանցանքի գիրը գրուած
27 էր , Թէ Հրէից Թագաւորն է ։ Ու
անոր հետ երկու աւազակ . խաչը
հանեցին . մէկը անոր աջ կողմէն ,
28 ու մէկը ձախ կողմէն ։ Եւ կատա-
րուեցաւ ան գիրը՝ որ կ՚ըսէ , Թէ
Անօրէններուն հետ սեպուեցաւ ։
29 Եւ անոնք որ կ՚անցնէին՝ կը հայ-
հոյէին անոր , գլուխնին կը շարժէ-
ին՝ ու կ՚ըսէին . Աւա՜ղ նոր տա-
ճարը կը քակէիր , և իրեք օրուան
30 մէջ կը շինէիր . Ինքզինքդ ազա-
31 տէ , ու իջի՛ր ատ խաչէդ ։ Նոյն-
պէս ալ քահանայապետները դը-
պիրներուն հետ իրենց մէջը ծաղր
ընելով կ՚ըսէին . Ուրիշները ազա-
տեց , ինքզինքը չկրնար ազատել ։
32 Ատ Քրիստոսը Իսրայէլի Թագաւո-
րը՝ թող հիմա խաչէն վա՛ր իջնէ ,

ա Մատ . իէ . 26 ։ Յով . ժթ . 1 , 16 ։
բ Մատ . իէ . 27 ։
գ Մատ . իէ . 32 ։ Ղու . իգ . 26 ։
դ Մատ . իէ . 33 ։ Ղու . իգ . 33 ։ Յով . ժթ . 17 ։
ե Մատ . իէ . 34 ։
զ Սաղ . իբ . 18 ։ Ղու . իգ . 34 ։ Յով . ժթ . 23 ։
է Տես Մատ . իէ . 45 ։ Ղու . իգ . 44 ։ Յով . ժթ . 14 ։
ը Մատ . իէ . 37 ։ Յով . ժթ . 19 ։
թ Մատ . իէ . 38 ։ Եսա . ծգ . 12 ։ Ղու . իբ . 37 ։
ժ Սաղ . իբ . 7 ։ Մր . ժդ . 58 ։ Յով . բ . 19 ։

որ տեսնենք ու հաւատանք . և իր
հետը խաչը ելլողները կը նախա-
տէին զանիկայ ։
33 Ու վեցերորդ ժամը հասածին
պէս , բոլոր երկրին վրայ խաւար
34 եղաւ մինչև իններորդ ժամը ։ Եւ
իններորդ ժամուն՝ Յիսուս մեծ
ձայնով աղաղակեց , ու ըսաւ .
Էլօի Էլօի՝ լամա սաբաքթանի . որ
կը թարգմանուի , Աստուած իմ՝
Աստուած իմ , ինչո՞ւ զիս թողու-
35 ցիր ։ Եւ քովը կայնողներէն ո-
մանք երբոր լսեցին՝ կ՚ըսէին թէ ,
36 Եղիան կը կանչէ ։ Ու մէկը վա-
զեց սպունգ մը քացախով լեցուց ,
ու եղէգի մը անցընելով՝ տուաւ
անոր որ խմէ , և ըսաւ . Թո՛ղ տուր
տեսնենք՝ թէ Եղիան կու գա՞յ ա-
տիկայ վար իջեցընելու ։
37 Եւ Յիսուս մեծ ձայն մը հանեց ,
38 ու հոգի տուաւ ։ Ու տաճարին
վարագոյրը երկուքի պատռեցաւ
39 վերէն ՚ի վար ։ Եւ հարիւրապետը
որ անոր դիմացը կեցեր էր , տես-
նելով որ այսպէս աղաղակելով հո-
գի տուաւ , ըսաւ . Յիրաւի Որդի
40 Աստուծոյ էր աս մարդը ։ Կնիկ-
ներ ալ կային՝ որ հեռուանց կը
նայէին . որոնց մէջն էր Մարիամ
Մագդաղենացին , և պզտիկ Յա-
կոբոսին ու Յովսէսին մայրը՝ Մա-
41 րիամ , և Սողոմէ . Որոնք՝ երբոր
Յիսուս Գալիլեա էր , իր ետևէն
կ՚երթային , և իրեն սպասաւորու-
թիւն կ՚ընէին . և ուրիշ շատ
կնիկներ ալ՝ որ իր հետը Երուսա-
ղէմ ելեր էին ։
42 Ու երբոր իրիկուն եղաւ , որ օրը
ուրբաթ՝ այսինքն շաբաթին առջի
43 օրը ըլլալով , Յովսէփ Արիմաթա-
ցի երևելի խորհրդական մը՝ որ ինքն
ալ Աստուծոյ թագաւորութեա-
նը կը սպասէր , եկաւ՝ ու համարձա-
կութիւն ընելով՝ Պիղատոսին քո-
վը մտաւ , և Յիսուսին մարմինը
44 խնդրեց ։ Ու Պիղատոս զարմա-
ցաւ՝ որ արդէն մեռած ըլլայ . և
հարիւրապետը իրեն կանչելով՝ հար-
ցուց անոր թէ՝ Շա՞տ ատեն է որ
45 մեռաւ ։ Ու երբոր ստոյգը իմա-
ցաւ հարիւրապետէն , մարմինը
46 Յովսէփին շնորհեց ։ Եւ Յովսէփ
կտաւ գնեց , ու զանիկայ վար իջե-
ցընելով՝ կտաւովը փաթթեց , ու
դրաւ գերեզմանի մը մէջ՝ որ քարէ
փորուած էր . և քար մը գլտորցուց
47 գերեզմանին դուռը ։ Իսկ Մարիամ
Մագդաղենացին , ու Յովսէսին
մայրը Մարիամ տեսան ան տեղը ,
ուր որ դրուեցաւ ։

ԳԼ . ԺԶ

1 Հրեշտակ մը Քրիստոսի յարութիւն առնելը
կ՚աւետէ իրեք կնիկներու ։ 9 Քրիստոս կ՚ե-

Յամի Տեառն 33

ի Մատ . իէ . 44 ։ Ղու . իգ . 39 ։
լ Մատ . իէ . 45 ։ Ղու . իգ . 44 ։
խ Սաղ . իբ . 1 ։ Մատ . իէ . 46 ։
ծ Մատ . իէ . 48 ։ Յով . ժթ . 29 ։
կ Սաղ . կթ . 21 ։
հ Մատ . իէ . 50 ։ Ղու . իգ . 46 ։ Յով . ժթ . 30 ։
ձ Մատ . իէ . 51 ։ Ղու . իգ . 45 ։
ղ Մատ . իէ . 54 ։ Ղու . իգ . 47 ։
ճ Մատ . իէ . 55 ։ Ղու . իգ . 49 ։
մ Սաղ . լը . 11 ։
յ Ղու . ը . 2 , 3 ։
ն Մատ . իէ . 57 ։ Ղու . իգ . 50 ։ Յով . ժթ . 38 ։
շ Ղու . բ . 25 , 38 ։
ո Մատ . իէ . 59 , 60 ։ Ղու . իգ . 53 ։ Յով . ժթ . 40 ։

Յամի Տեառն
33

ա Մատ. ԻԸ. 1 ։ Ղու. ԻԴ. 1 ։ Յով. Ի. 1 ։
բ Ղուկ. ԻԴ. 56 ։
գ Ղու. ԻԴ. 1 ։ Յով. Ի. 1 ։
դ Ղու. ԻԴ. 3 ։ Յով. Ի. 11, 12 ։
ե Մատ. ԻԸ. 5 ։ 6 ։ 7 ։
զ Մատ. ԻԶ. 32 ։ Գլ. ԺԴ. 28 ։
է Տես Մատ. ԻԸ. 8 ։ Ղու. ԻԴ. 9 ։
ը Յով. Ի. 14 ։
թ Ղու. Ը. 2 ։
ժ Ղու. ԻԴ. 10 ։ Յով. Ի. 18 ։

րենոյ Մարիամ Մագդաղենացիին . 12 արտը գացող երկու աշակերտներուն , 14 եօթը առաքեալներուն , 15 որոնք կը խրկէ աւետարանը քարոզելու ։ 19 Քրիստոս երկինքը կը համբառնայ ։

1 Եւ ա երբոր շաբաթը անցաւ , Մա-
րիամ Մագդաղենացին՝ և Յա-
կոբոսին մայրը Մարիամ՝ և Սողոմէ
բ խունկեր ծախու առին , որ գան
2 օծեն անիկայ ։ գ Եւ միաշաբթի
առտուանց շատ կանուխ՝ արևը որ
3 կը ծագէր՝ եկան գերեզմանը , Ու
իրարու կ'ըսէին . Քարը ո՞վ պիտի
գլտորցընէ մեզի գերեզմանին դըռ-
4 նէն . ( Ու նայեցան տեսան որ քա-
րը գլտորցուած էր . ) ինչու որ
5 շատ մեծ էր ։ դ Եւ ներս գերեզմա-
նը մտնելով՝ երիտասարդ մը տե-
սան որ աջ կողմը նստեր էր ճեր-
մակ պատմուճան հագած , ու զար-
6 հուրեցան ։ ե Եւ անիկայ ըսաւ ա-
նոնց . Մի՛ զարհուրէք . Յիսուս
Նազովրեցին կը փնտռէք , որ խա-
չուեցաւ . անիկայ յարութիւն ա-
ռաւ , հոս չէ . ահա՛ ան տեղը՝ ուր
7 որ դրին զանիկայ ։ Բայց գացէ՛ք՝
ըսէ՛ք անոր աշակերտներուն և
Պետրոսին , թէ զ Ահա՛ ձեզմէ առաջ
Գալիլեա կ'երթայ , հոն պիտի տես-
նէք անիկայ՝ է ինչպէս որ ձեզի ըսաւ ։
8 Եւ անոնք դողով ու ապշութեամբ
բռնուած՝ ելան ու փախան գերեզ-
մանէն . է և մէկու մը բան չըսին ,
քանզի կը վախնային ։
9 Յիսուս միաշաբթի առտուանց
յարութիւն առած՝ առաջ ը Մա-
րիամ Մագդաղենացիին երևցաւ ,
որ թ անկէ եօթը դև հաներ էր ։
10 ժ Անիկայ գնաց անոնց պատմեց՝
որոնք անոր հետն էին , երբոր սուգ
11 կ'ընէին ու կու լային ։ Իսկ ի ա-
նոնք երբոր լսեցին թէ կենդանի է
և թէ իրեն երևցաւ , չհաւատա-
ցին ։
12 Ետքը ուրիշ կերպարանքով լ ե-
րևցաւ անոնցմէ երկուքին՝ որ քա-
13 լելով արտը կ'երթային ։ Եւ
անոնք գացին ուրիշներուն պատմե-
ցին . ու անոնց ալ չհաւատացին ։
14 Ի Վերջը՝ տասնումէկին երևցաւ ,
երբոր սեղան նստած էին , ու ե-
րեսնին զարկաւ իրենց անհաւա-
տութիւնը և սրտերնուն կարծրու-
թիւնը , վասն զի որոնց որ ինքը
երևցաւ մեռելներէն յարութիւն
առած , իրենք չհաւատացին ։
15 ծ Եւ ըսաւ անոնց . Գացէ՛ք բոլոր
աշխարհ , ու կ աւետարանը քարո-
զեցէ՛ք բոլոր ստեղծուածներուն ։
16 հ Ան որ հաւատայ՝ ու մկրտուի , պի-
տի փրկուի , յ և ան որ չհաւատայ ,
17 պիտի դատապարտուի ։ Եւ ա-
նոնք որ կը հաւատան , աս նշանները
անոնց հետ պիտի երթան . ն Իմ ա-
նունովս դևեր պիտի հանեն , ճ նոր
18 լեզուներ պիտի խօսին . մ Զեռունե-
նին օձեր պիտի բռնեն . և թէ որ
մահառիթ դեղ մը խմեն , իրենց
պիտի չվնասէ . յ հիւանդներու վրայ
ձեռք պիտի դնեն . ու անոնք պիտի
առողջանան ։
19 Արդ՝ ն Տէրը անոնց հետ խօսելէն
ետքը շ երկինքը համբարձաւ , ու
20 Աստուծոյ ո աջ կողմը նստաւ ։ Եւ
անոնք ելան՝ ու ամէն տեղ կը քա-
րոզէին . և Տէրը անոնց գործակից
էր , չ ու խօսքը կը հաստատէր ան
նշաններով՝ որ անոնց հետը կ'եր-
թային ։

Յամի Տեառն
33

ի Ղու. ԻԴ. 11 ։
լ Ղու. ԻԴ. 13 ։
Ի Ղու. ԻԴ. 36 ։ Յով. Ի. 19 ։ ա Կոր. ԺԵ. 5 ։
ծ Մատ. ԻԸ. 19 ։ Յով. ԺԵ. 16 ։
կ Կող. Ա. 23 ։
հ Յով. Գ. 18 , 36 ։ Գոր. Բ. 38 ։ ԺԶ. 30 , 31 , 32 ։ Հռով. Ժ. 9 ։ ա Պետ. Գ. 21 ։
յ Յով. ԺԲ. 48 ։
ն Ղու. Ժ. 17 ։ Գոր. Ե. 16 ։ Ը. 7 ։ ԺԶ. 18 ։ ԺԹ. 12 ։
ճ Գոր. Բ. 4 ։ Ժ. 46 ։ ԺԹ. 6 ։ ա Կոր. ԺԲ. 10 , 28 ։
մ Ղու. Ժ. 19 ։ Գոր. ԻԸ. 5 ։
յ Գոր. Ե. 15 , 16 ։ Թ. 17 ։ ԻԸ. 8 ։ Յակ. Ե. 14 , 15 ։
ն Գոր. Ա. 2 , 3 ։
շ Ղու. ԻԴ. 51 ։
ո Սաղ. ՃԺ. 1 ։ Գոր. Է. 55 ։
չ Գոր. Ե. 12 ։ ԺԴ. 3 ։ ա Կոր. Բ. 4 , 5 ։ Եբր. Բ. 4 ։

# ԱՒԵՏԱՐԱՆ ԸՍՏ ՂՈՒԿԱՍՈՒ

## ԳԼՈՒԽ Ա

1 Ղուկասու աւետարանին յառաջաբանութիւնը ։ 5 Եղիսաբեթին, 26 ու կոյս Մարիամին յղութիւնը ։ 39 Եղիսաբեթին և Մարիամին մարգարէութիւնը Քրիստոսի վրայով ։ 57 Յովհաննէս մկրտչին ծնունդը և թլփատութիւնը ։ 67 Զաքարիայի մարգարէութիւնը Քրիստոսին, 76 և Յովհաննէսին վրայով ։

1 Որովհետև շատերը մեր մէջը հաստատ գիտցուած բաներուն վըրայով եղած պատմութիւնը կարգի
2 դնելու ձեռք զարկին. ^ա Ինչպէս որ սկիզբէն աչքով տեսնողները և խօսքին սպասաւոր եղողները ^բ ա-
3 ւանդեցին մեզի. ^գ Ես ալ՝ որ սկիզբէն ան ամէն բաներուն ճշդութեամբ տեղեկացեր էի, յարմար դատեցի ^դ կարգաւ գրել քեզի՝ ^ե ով
4 պատուական Թէոփիլոս. ^զ Որ սորված բաներուդ ստուգութիւնը իմանաս ։
5 ^է Հրէաստանի Հերովդէս թագաւորին օրերը՝ ^ը Աբիայի դասակարգութենէն Զաքարիա անունով քահանայ մը կար. ու անոր կնիկը Ահարոնի աղջիկներէն էր,
6 և անոր անունը Եղիսաբեթ ։ Ու երկուքն ալ Աստուծոյ առջևը ^թ արդար էին, և Տէրոջը բոլոր պատուիրանքներուն ու իրաւունքներուն մէջ անարատութեամբ կը
7 քալէին ։ Եւ զաւակ չունէին, ինչու որ Եղիսաբեթ ամուլ էր. ու երկուքն ալ օրերնին անցուցած էին ։
8 Ու երբոր անիկայ իր դասակարգութեան օրերը հասնելուն՝ քահանայական պաշտօնը կը կատարէր
9 Աստուծոյ առջևը, Քահանայութեան սովորութեանը պէս՝ ^ժ իրեն ինկաւ որ Տէրոջը տաճարը մտնէ
10 ^ի խնկարկութիւն ընէ ։ ^լ Եւ ժողովուրդին բոլոր բազմութիւնը դուրսը աղօթքի կայներ էին խունկին
11 ատենը ։ Ու երևցաւ անոր՝ Տէրոջը հրեշտակը, որ կայներ էր
12 ^խ խունկի սեղանին աջ կողմը ։ Եւ Զաքարիա երբոր տեսաւ՝ ^ծ շփոթեցաւ, ու անոր վրայ վախ մը ին-
13 կաւ ։ Եւ հրեշտակը ըսաւ անոր. Մի՛ վախնար՝ Զաքարիա, ինչու որ քու աղօթքդ լսուեցաւ, և քու կինդ Եղիսաբեթ քեզի որդի մը

^ա Եբր. բ. 3 ։ ա Պետ. ե. 1 ։ բ Պետ. ա. 16 ։ ա Յոհ. ա. 1 ։
^բ Մար. ա. 1 ։ Յոհ. ժե. 27 ։
^գ Գործ. ժե. 19, 25, 28 ։ ա Կոր. է. 40 ։
^դ Գործ. ժա. 4 ։
^ե Գործ. ա. 1 ։
^զ Յոհ. ի. 31 ։
^է Մատ. բ. 1 ։ Սովորական եղած Փրկչի թուականէն վեց տարի առաջ ։
^ը ա Մն. իդ. 10, 19 ։ Նեեմ. ժբ. 4, 17 ։
^թ Ծն. է. 1 ։ ժէ. 1 ։ Գ Թագ. թ. 4 ։ Դ Թագ. ի. 3 ։ Յոբ. ա. 1 ։ Գործ. իգ. 1 ։ իդ. 16 ։ Փիլ. գ. 6 ։
^ժ ա Մն. իդ. 19 ։ բ Մն. ը. 14 ։ լա. 2 ։
^ի Ել. լ. 7, 8 ։ ա Թագ. բ. 28 ։ ա Մն. իգ. 13 ։ բ Մն. իթ. 11 ։
^լ Ղև. ժզ. 17 ։ Յայտ. ը. 3, 4 ։
^խ Ել. լ. 1 ։
^ծ Դատ. զ. 22 ։ ժգ. 22 ։ Դան. ժ. 8 ։ Հմր 29 ։ Գլ. բ. 9 ։ Գործ. ժ. 4 ։ Յայտ. ա. 17 ։

պիտի ծնանի, ու ^կ անոր անունը
14 ^* Յովհաննէս դնես ։ Եւ քեզի ուրախութիւն ու ցնծութիւն պիտի ըլլայ, և ^հ շատերը անոր ծնանելուն
15 վրայ պիտի ուրախանան. Ինչու որ Տէրոջը առջևը մեծ պիտի ըլլայ, և ^ձ գինի ու օղի պիտի չխմէ. և ^ղ դեռ իր մօրը որովայնէն Սուրբ
16 Հոգիով պիտի լեցուի. ^ճ Ու Իսրայէլի որդիներէն շատերը իրենց Տէր Աստուծոյն պիտի դարձընէ ։
17 ^մ Եւ ինքը անոր առջևէն պիտի գայ Եղիայի հոգիովը ու զօրութիւնովը, հայրերուն սիրտերը որդիոցը վրայ դարձընելու, և անհնազանդները՝ արդարներուն իմաստութեանը, որ Տէրոջը բարեկարգ ժողո-
18 վուրդ մը պատրաստէ ։ Եւ Զաքարիա ըսաւ հրեշտակին. ^յ Ինչո՞վ գիտնամ աս բանը. որովհետև ես ծեր եմ, ու իմ կինս իր օրերը
19 անցուցած է ։ Եւ հրեշտակը պատասխան տալով՝ ըսաւ անոր. Ես եմ ^ն Գաբրիէլը՝ որ Աստուծոյ առջևը կը կայնիմ, ու խրկուեցայ քեզի զրուցելու, և աս բաներուն
20 աւետիսը քեզի տալու ։ Եւ ահա ^շ համր պիտի ըլլաս դուն, ու պիտի չկրնաս խօսիլ մինչև ան օրը՝ որ աս բաները ըլլան. քանզի չըհաւատացիր իմ խօսքերուս, որոնք իրենց ատենին պիտի կատարուին ։
21 Ու ժողովուրդը Զաքարիային կը սպասէր, և կը զարմանային անոր տաճարին մէջ ուշանալուն վրայ ։
22 Ու երբոր դուրս ելաւ, չէր կրնար խօսիլ անոնց հետ. և իմացան որ տաճարին մէջ տեսիլք մը տեսած է. ու ինքը նշանով կը խօսէր ա-
23 նոնց հետ, և համր կը կենար ։ Ու եղաւ որ ^ո երբ անոր պաշտօնին օրե-
24 րը լմընցան, իր տունը գնաց ։ Եւ ան օրերէն ետքը անոր կինը Եղիսաբեթ յղացաւ, ու հինգ ամիս ինքզինքը կը պահէր, և կ՚ըսէր.
25 Այսպէս ըրաւ ինծի Տէրը ^չ աս օրերս, որ ^պ իմ վրաս նայեցաւ ^ջ նախատինքս մարդոց մէջէն վերցընելու ։
26 Ու վեցերորդ ամսուն մէջ Գաբրիէլ հրեշտակը Աստուծմէ խըրկուեցաւ Գալիլեայի մէկ քաղաքը՝
27 որուն անունը Նազարեթ էր, ^ռ Մէկ

Սովորական եղած Փրկչի թուականէն վեց տարի առաջ ։
^կ Հմր 60, 63 ։
^* Այ՝ Տէրոջը շնորհքը ։
^հ Հմր 58 ։
^ձ Թուոց. զ. 3 ։ Դատ. ժգ. 4 ։ Գլ. է. 33 ։
^ղ Երեմ. ա. 5 ։ Գաղ. ա. 15 ։
^ճ Մաղ. դ. 5, 6 ։
^մ Մաղ. դ. 5 ։ Մատ. ժա. 14 ։ Մար. թ. 11 ։
^յ Ծն. ժէ. 17 ։
^ն Դան. ը. 16 ։ թ. 21, 22, 23 ։ Մատ. ժը. 10 ։ Եբր. ա. 14 ։
^շ Եզեկ. գ. 26 ։ իդ. 27 ։
^ո Տես ... դ Թագ. ժա. 5 ։ ա Մն. թ. 25 ։
^չ Ծն. լ. 23 ։ Ես. դ. 1 ։
^պ ծր. 1, 4 ։
^ռ Մատ. ա. 18 ։ Գլ. բ. 4, 5 ։

Սովորական եղած Փրկչի թուականէն վեց տարի առաջ։

ա Դան. թ. 23։ ժ. 19։
բ Դատ. զ. 12։
գ Հմր 12։
դ Ես. է. 14։ Մատ. ա. 21։
ե Ղւ. բ. 21։
զ Մար. ե. 7։
է Բ Թագ. է. 11, 12։ Ես. թ. 6, 7։ ժզ. 5։ Երեմ. իգ. 5։ Սաղ. ճլբ. 11։
ը Յայտ. գ. 7։
թ Դան. բ. 44։ է. 14, 27։ Աբդ. 21։ Միք. դ. 7։ Յով. ժբ. 34։ Եբր. ա. 8։
ժ Մատ. ա. 20։
ի Մատ. ժդ. 33։ իզ. 63, 64։ Մար. ա. 1։ Յով. ա. 34։ ի. 31։ Գործ. ը. 37։ Հռով. ա. 4։
լ Ծն. ժը. 14։ Երեմ. լբ. 17։ Զաք. ը. 6։ Մատ. ժթ. 26։ Մար. ժ. 27։ Ղւ. ժը. 27։ Հռով. դ. 21։
խ Յես. իա. 9, 10, 11։
ծ Հմր 28։ Դատ. ե. 24։
* Կամ հաւատացեր է. քանզի

կոյսի մը՝ մարդու մը նշանուած,
որուն անունը Յովսէփ էր՝ Դաւի-
թի տունէն. և այն կոյսին անունը
28 Մարիամ էր։ Ու հրեշտակը ա-
նոր գալով՝ ըսաւ. ա Ողջո՜յն քեզ՝
ով շնորհընկալ կոյս. բ Տէրը քու
հետդ է. դուն կանանց մէջ օրհնեալ
29 ես։ Եւ անիկայ տեսնելով՝ անոր
խօսքին վրայ գ խռովեցաւ, ու ինքն-
իրեն կը մտածէր՝ թէ ինչպէս բան
30 պիտի ըլլայ այս ողջոյնը։ Եւ
հրեշտակը անոր ըսաւ. Մի՛ վախ-
նար՝ Մարիամ, ինչու որ Աստուծմէ
31 շնորհք գտար. դ Եւ ահա պիտի
յղանաս, ու որդի պիտի ծնանիս,
և ե անոր անունը Յիսուս պիտի
32 դնես։ Անիկայ մեծ պիտի ըլլայ,
զ ու Բարձրելոյն Որդին պիտի ը-
սուի, և է Տէր Աստուած պիտի տայ
անոր՝ իր հօրը Դաւիթին աթոռը.
33 ը ու Յակոբին տանը վրայ յաւի-
տեան պիտի թագաւորէ. Եւ անոր
թագաւորութիւնը վերջ պիտի
34 չունենայ։ Ու Մարիամ ըսաւ
հրեշտակին. Ի՞նչպէս պիտի ըլլայ
ատ բանը, որովհետև ես էրիկ մարդ
35 չեմ գիտեր։ Եւ հրեշտակը պա-
տասխան տալով՝ ըսաւ անոր. ժ Հո-
գին Սուրբ պիտի գայ քեզի, ու
Բարձրելոյն զօրութիւնը քու վրադ
հովանի պիտի ըլլայ. ուստի այն
քեզմէ ծնանելու սուրբը՝ ի Աստու-
36 ծոյ Որդի պիտի ըսուի։ Եւ ահա
քու ազգականդ Եղիսաբեթ՝ անի-
կայ ալ իր պառաւութեան ատենը
որու զաւակով մը յղի է. ու ասի-
կայ այն ամուլ ըսուածին վեցերորդ
37 ամիսն է. Ինչու որ լ Աստուծոյ
քովը բնաւ մէկ բան մը անհնարին
38 չըլլար։ Եւ Մարիամ ըսաւ. Ահա
ես Տէրոջը աղախինն եմ, քու ը-
սածիդ պէս թող ըլլայ ինծի. ու
հրեշտակը անոր քովէն գնաց։
39 Այն օրերը ելաւ Մարիամ՝ ու
արտորնօք լեռնակողմը խ Յուդայի
40 մէկ քաղաքը գնաց։ Եւ մտաւ
Զաքարիային տունը, ու Եղիսա-
41 բեթին բարև տուաւ։ Եւ եղաւ
որ երբ լսեց Եղիսաբեթ Մարիամին
բարևը, մանուկը անոր որովայնին
մէջը խաղաց, ու Եղիսաբեթ Սուրբ
42 Հոգիով լեցուեցաւ. Եւ բարձր
ձայնով մը կանչեց ու ըսաւ.
ծ Օրհնեա՜լ ես դուն կանանց մէջ, և
օրհնեալ է քու որովայնիդ պտուղը։
43 Եւ աս ինծի ուսկից եղաւ, որ իմ
44 Տէրոջս մայրը ինծի գայ. Վասն
զի ահա երբոր քու բարևիդ ձայնը
ականջիս եկաւ, մանուկը որովայ-
նիս մէջը խաղաց ուրախութենէն։
45 Եւ երանի անոր՝ որ *հաւատացեր է
թէ պիտի կատարուի այն բաները՝
46 որ Տէրոջմէ ըսուեցաւ իրեն։ Եւ

Սովորական եղած Փրկչի թուականէն վեց տարի առաջ։

կ Ա Թագ. բ. 1։ Սաղ. լդ. 2, 3։ լե. 9։ Ամբ. գ. 18։
հ Ա Թագ. ա. 11։ Սաղ. ճլը. 6։
ձ Մաղ. գ. 12։ Ղւ. ժա. 27։
ղ Սաղ. հա. 19։ ճիզ. 2, 3։
ճ Սաղ. ճժա. 9։
մ Ծն. ժէ. 7։ Ես. ի. 6։ Սաղ. ճդ. 17, 18։
յ Սաղ. ղը. 1։ ճժը. 15։ Ես. խ. 10։ ծա. 9։ ծբ. 10։
ն Սաղ. լգ. 10։ Ա Պետ. ե. 5։
շ Ա Թագ. բ. 6։ Յոբ. ե. 11։ Սաղ. ճժգ. 6։
ո Ա Թագ. բ. 5։ Սաղ. լդ. 10։
չ Սաղ. դը. 3։ Երեմ. լա. 3, 20։
պ Ծն. ժէ. 19։ Սաղ. ճլբ. 11։ Հռով. ժա. 28։ Գաղ. գ. 16։
ջ Հմր 14։
ռ Ծն. ժէ. 12։ Ղև. ժբ. 3։
ս Հմր 13։
վ Հմր 13։
տ Հմր 20։
ր Հմր 39։
ց Ղւ. բ. 19, 51։
ւ Ծն. լթ. 2։ Սաղ. ձ. 17։ ձթ. 21։ Գործ. ժա. 21։
փ Յովել. բ. 28։

Մարիամ ըսաւ. կ Իմ անձս կը
47 մեծցնէ Տէրը. Եւ իմ հոգիս ու-
րախացաւ իմ Փրկիչ Աստուծմովս։
48 Ինչու որ հ իր աղախինին խոնարհու-
թեանը նայեցաւ. քանզի ահա ա-
սկէ ետև ձ բոլոր ազգերը ինծի երա-
49 նութիւն պիտի տան։ Վասն զի
Հզօրը ղ ինծի մեծամեծ բաներ ը-
րաւ. ու անոր անունը սուրբ է։
50 Եւ ճ անոր ողորմութիւնը իրմէն
վախցողներուն վրայ է ազգէ՛ ազգ։
51 մ Իր բազուկովը զօրութիւն ցու-
ցուց. յ ցիրուցան ըրաւ ամբար-
տաւանները՝ իրենց սրտին խորհուր-
52 դովը։ ն Զօրաւորները իրենց աթոռ-
ներէն իջեցուց, ու խոնարհները
53 բարձրացուց։ շ Անօթիները բա-
րիքներով լեցուց, և հարուստները
54 պարապ ճամբեց։ Օգնութիւն
ըրաւ իր Իսրայէլ ծառային՝ չ իր
ողորմութիւնը միտք բերելով.
55 պ Ինչպէս որ ինքը խօսեցաւ մեր
հայրերուն՝ Աբրահամին ու անոր
սերունդին յաւիտեան։
56 Եւ Մարիամ անոր քովը իրեք
ամիսի չափ կեցաւ, ու իր տունը
դարձաւ։
57 Ու Եղիսաբեթին ծնանելու ժա-
մանակը լեցուեցաւ, ու որդի մը
58 ծնաւ։ Եւ լսեցին անոնք որ անոր
բոլորտիքը կը բնակէին՝ ու անոր
ազգականները, որ Տէրը անոր վը-
րայ իր մեծ ողորմութիւնը ցու-
ցուց. և ջ անոր հետ կ'ուրախա-
նային։
59 Ու եղաւ որ ռ ութերորդ օրը տը-
ղան թլփատելու եկան. և զա-
նիկայ իր հօրը անունովը Զաքարիա
60 կը կոչէին։ Իսկ անոր մայրը պա-
տասխան տուաւ՝ ու ըսաւ. ս Չէ,
հապա Յովհաննէս պիտի կոչուի։
61 Եւ անոր ըսին՝ թէ Քու ազգա-
կաններուդ մէջ մէկը չկայ՝ որ աս
62 անունով կոչուի։ Աչք կ'ընէին
անոր հօրը՝ թէ ինչ անունով կ'ու-
63 զէ որ անիկայ կոչուի։ Ան ալ
տախտակ մը ուզեց, ու գրեց՝ ը-
սելով. վ Յովհաննէս է անոր ա-
նունը. ու ամէնքը զարմացան։
64 տ Եւ իսկոյն բացուեցաւ անոր
բերանը ու անոր լեզուն, և կը
65 խօսէր՝ ու կ'օրհնէր զԱստուած։ Եւ
վախ մը ինկաւ այն ամենուն վրայ՝
որոնք անոնց բոլորտիքը կը բը-
նակէին. ու աս ամէն բաները Հը-
րէաստանի բոլոր ր լեռնակողմը կը
66 զրուցուէր։ Եւ ամէն լսողները
ց իրենց սիրտերուն մէջը դրին, ու
կ'ըսէին. Արդեօք աս տղան ի՞նչ
պիտի ըլլայ. ու ւ Տէրոջը ձեռքը
անոր հետն էր։
67 Եւ անոր հայրը Զաքարիան
փ Սուրբ Հոգիով լեցուած՝ մարգա-

Սովորական եղած փրկչի թուականէն վեց տարի առաջ :

ե Գ Թագ. ա. 48 : Սաղ. խա. 13 : Հբ. 18 : Ճզ. 48 :
զ Ել. գ. 16 : Դ. 31 : Սաղ. Ճժա. 9 : Գւ. է. 16 :
է Սաղ. Ճլբ. 17 :
ը Երեմ. իգ. 5, 6 : Լ. 10 : Դան. Թ. 24 : Գոր. Դ. 21 :
թ Հռով. ա. 2 :
ժ Ղև. իզ. 42 : Սաղ. ղը. 3 : Ճէ. 8, 9 : Ճզ. 45 : Եզեկ. ժզ. 60 : Հմր 54 :
ժա Ծն. ժբ. 3 : ժէ. 4 : իբ. 16, 17 : Եբր. զ. 13, 17 :
ժբ Հռով. զ. 18, 22 : Եբր. թ. 14 :
ժգ Երեմ. լբ. 39, 40 :
ժդ Եփե. դ. 24 : Բ Թես. բ. 12 : Բ Տիմ. ա. 9 : Տիտ. բ. 12 : Ա Պետ. ա. 15 : Բ Պետ. ա. 4 :
ժե Ես. խ. 3 : Մաղ. գ. 1 : դ. 5 : Մատ. ժա. 10 : Հմր 17 :
ժզ Մար. ա. 4 : Գւ. գ. 3 :
ժէ Թուո. իդ. 17 : Մաղ. դ. 2 :
ժը Ես. թ. 2 : խբ. 7 : խթ. 9 : Մատ. դ. 16 : Գործ. իը. 18 :
Հինգ տարի առաջ յիշեալ թուականէն :
ժթ Գւ. բ. 40 :
ի Մատ. գ. 1 : ժա. 7 :

---

ա Գոր. ե. 37 :
բ Ա Թագ. ժզ. 1, 4 : Յով. է. 42 :
գ Մատ. ա. 16 : Գւ. ա. 27 :

68 րհացաւ ու ըսաւ . Օրհնեալ ըլլայ
Իսրայէլի Տէր Աստուածը , որ այ-
ցելութեան եկաւ , և իր ժողովուր-
69 դին փրկութիւն ըրաւ . Ու մեզի
փրկութեան եղջիւր մը հանեց իր
Դաւիթ ծառային տունէն .
70 (Ինչպէս որ սուրբերուն բերնովը
խօսեցաւ , որոնք աշխարհի սկիզբէն
՚ի վեր անոր մարգարէներն էին . )
71 Փրկութիւն մեր թշնամիներէն , և
բոլոր մեզ ատողներուն ձեռքէն .
72 Ողորմութիւն ընելու մեր հայրե-
րուն վրայ , և իր սուրբ ուխտը
73 միտք բերելու , (Այն երդումը՝ որ
մեր հօրը Աբրահամին ըրաւ , ) մե-
74 զի տալու , Որ մեր թշնամիներուն
ձեռքէն ազատուելով՝ առանց
75 վախի զանիկայ պաշտենք , Սըր-
բութիւնով ու արդարութիւնով
անոր առջևը՝ մեր կենացը բոլոր
76 օրերուն մէջ : Եւ դուն ո՛վ մանուկ՝
Բարձրեալին մարգարէն պիտի կո-
չուիս . ինչու որ Տէրոջը երեսին
առջևէն պիտի երթաս՝ անոր ճամ-
77 բաները պատրաստելու , Անոր
ժողովուրդին գիտցընելու իրենց
փրկութիւնը՝ իրենց մեղքերուն
78 թողութիւնովը , Մեր Աստուծոյն
գթած ողորմութեանը համար՝ ո-
րով Ծագող արեգակը վերէն մեզի
79 այցելութեան եկաւ , Խաւարի և
մահուան ստուերի մէջ նստողնե-
րուն լոյս տալու , ու մեր ոտքերը
խաղաղութեան ճամբուն մէջ շիտ-
կելու :
80 Եւ տղան կը մեծնար ու կը զօ-
րանար հոգիով , և անապատնե-
րուն մէջն էր մինչև այն օրը՝ որ ինքը
Իսրայէլին երևցաւ :

## ԳԼ. Բ

1 Օգոստոս կայսրը կը հրամայէ աշխարհագիր ընել իր բոլոր տէրութեանը մէջ : 6 Քրիստոսի ծնունդը : 8 Հրեշտակ մը աւետիս կու տայ հովիւներուն : 13 Երկնային զօրաց բազմութիւնը կ'օրհնեն զԱստուած՝ Քրիստոսի ծննդեանը համար : 21 Քրիստոս կը թլփատուի : 22 տաճարը կը տարուի : 28 Սիմէօն և Աննա կը մարգարէանան Քրիստոսի վրայով : 40 Քրիստոս կը զարգանայ իմաստութեամբ , 46 տաճարին մէջ Հրէից վարդապետներուն հարցմունքներ կ'ընէ , 51 և իր ծնողացը հնազանդ կը մնայ :

1 Ու եղաւ որ այն օրերը Օգոստոս
կայսրէն հրաման ելաւ՝ որ բո-
2 լոր աշխարհ գրուի : (Աս առջի
աշխարհագիրը եղաւ Կիւրենոսին
Սիւրիայի վրայ կուսակալութիւն
3 ըրած ատենը :) Եւ ամէնքը կ'եր-
թային աշխարհագիրը մտնելու՝ ա-
4 մէն մէկը իր քաղաքին մէջ : Յով-
սէփ ալ Գալիլեայէն Նազարէթ
քաղաքէն ելաւ դէպ 'ի Հրէաստան
Դաւիթի քաղաքը՝ որ Բեթլէհէմ
կ'ըսուի , (ինքը Դաւիթի տունէն
ու ազգատոհմէն ըլլալուն համար , )
5 Աշխարհագիրը մտնելու Մարիամին
հետ մէկտեղ , որ այն իր նշանածն
6 էր , և յղի էր : Ու եղաւ որ երբ
անոնք հոն էին , անոր ծնանելու
7 օրերը լեցուեցան . Եւ իր անդրա-
նիկ որդին ծնաւ , ու խանձարուրով
փաթթեց , և զանիկայ մսուրին
մէջը պառկեցուց . ինչու որ իջևա-
նին մէջ իրենց տեղ չկար :
8 Եւ այն տեղը հովիւներ կային
դաշտի մէջ կեցած , որոնք իրենց
հօտերուն գիշերուան պահպանու-
9 թիւնը կ'ընէին : Եւ ահա Տէրոջը
հրեշտակը անոնց վրայ իջաւ , ու
Տէրոջը փառքը անոնց բոլորտիքը
ծագեցաւ . ու խիստ շատ վախ-
10 ցան : Եւ հրեշտակը ըսաւ անոնց .
Մի վախնաք , ինչու որ ահա ես
ձեզի մեծ ուրախութեան աւետիս
կու տամ , որ բոլոր ժողովուրդին
11 պիտի ըլլայ . Վասն զի ձեզի այսօր
Փրկիչ մը ծնաւ Դաւիթի քաղա-
քին մէջ , որ ինքը Օծեալ Տէր
12 է : Եւ աս ձեզի նշան մը ըլլայ .
մանուկ մը պիտի գտնէք խանձա-
րուրով փաթթած , ու մսուրի մէջ
13 պառկած : Եւ իսկոյն այն հրեշ-
տակին հետը երկնային զօրքերու
բազմութիւն մը եղաւ , որոնք
զԱստուած կ'օրհնէին ու կ'ըսէին .
14 Երկինք բարձրութեանը մէջ Աս-
տուծոյ փառք , ու երկրիս վրայ
խաղաղութիւն , մարդոց մէջ
15 հաճութիւն : Ու եղաւ որ երբ
հրեշտակները անոնցմէ երկինքը
վերցան , հովիւները իրարու ըսին .
Եկէք մինչև Բեթլէհէմ երթանք ,
ու տեսնենք՝ թէ ի՞նչ է աս եղած
բանը , որն որ Տէրը մեզի ցուցուց :
16 Ու եկան արտորնօք , և գտան Մա-
րիամը ու Յովսէփը և մսուրին մէջ
17 պառկած մանուկը : Ու երբոր տե-
սան , իմացուցին այն խօսքին վրա-
յով , որ աս մանուկին համար
18 իրենց զրուցուեցաւ : Եւ ամէնքը
որ կը լսէին , կը զարմանային այն
բաներուն վրայ , որ հովիւները ի-
19 րենց կը զրուցէին . Բայց Մա-
րիամ աս ամէն բաները կը պահէր ,
ու իր սրտին մէջը կը մտածէր :
20 Եւ հովիւները դարձան , կը փա-
ռաւորէին ու կ'օրհնէին զԱստուած
այն ամէն բաներուն համար՝ որ
լսեցին ու տեսան , ինտոր որ իրենց
զրուցուած էր :
21 Ու երբոր ութ օրերը լման եղան
անիկայ թլփատելու , անոր անու-
նը Յիսուս դրուեցաւ , որ հրեշտա-
կէն կոչուած էր՝ դեռ ինքը մօրը
որովայնին մէջ չյղացած :
22 Ու Մովսէսին օրէնքին համեմատ՝
երբոր անոնց մաքրութեան օրերը

Հինգ տարի առաջ յիշեալ թուականէն :

---

դ Մատ. ա. 25 :
ե Գւ. ա. 12 :
զ Ծն. ժբ. 3 : Մատ. իը. 19 : Մար. ա. 15 : Հմր 31, 32 : Գւ. իդ. 47 : Կող. ա. 23 :
է Ես. թ. 6 :
ը Մատ. ա. 21 :
թ Մատ. ա. 16 : ժգ. 16 : Գւ. ա. 43 : Գոր. բ. 36 : ժ. 36 : Փիլ. բ. 11 :
ժ Ծն. իը. 12 : լբ. 1, 2 : Սաղ. Ճգ. 20, 21 : Ճխը. 2 : Դան. է. 10 : Եբր. ա. 14 : Յայտ. ե. 11 :
ժա Գւ. ժթ. 38 : Եփե. ա. 6 : գ. 10, 21 : Յայտ. ե. 13 :
ժբ Ես. ծէ. 19 : Գւ. ա. 79 : Հռով. ե. 1 : Եփե. բ. 17 : Կող. ա. 20 :
ժգ Յով. գ. 16 : Եփե. բ. 4, 7 : Բ Թես. բ. 16 : Ա Յով. դ. 9, 10 :
ժդ Ծն. լէ. 11 : Գւ. ա. 66 : Հմր 51 :
Չորս տարի առաջ յիշեալ թուականէն :
ժե Ծն. ժէ. 12 : Ղև. ժբ. 3 : Գւ. ա. 59 :
ժզ Մատ. ա. 21, 25 : Գւ. ա. 31 :
ժէ Ղև. ժբ. 2, 3, 4, 6 : ...

Չորս տարի առաջ վերոյիշեալ թուականէն։

լմննցաւ, Երուսաղէմ տարին զա-
նիկայ Տէրոջը առջեւ հանելու,
23 (Ինչպէս որ գրուած է Տէրոջը օ-
րէնքին մէջ թէ, Ամէն արու որ
արգանդ կը բանայ, Տէրոջը սուրբ
24 ըսուի,) Ու Տէրոջը օրէնքին մէջ
ըսուածին պէս՝ ընծայ տալու զոյգ
մը տատրակ կամ աղաւնիի երկու
25 ձագ։ Եւ ահա Երուսաղէմի մէջ
մարդ մը կար, որուն անունը Սի-
մէոն էր. ու ան մարդը արդար ու
աստուածավախ էր, և Իսրայէլի
մխիթարութեանը կը սպասէր. ու
26 Սուրբ Հոգին անոր վրայ էր։ Եւ
անոր յայտնուած էր Սուրբ Հո-
գիէն՝ թէ մահ պիտի չտեսնէ,
մինչև որ Տէրոջը Օծեալը տեսնէ։
27 Եւ Հոգիով տաճարը եկաւ. ու
երբոր ծնողքը բերին Յիսուս մա-
նուկը՝ որ օրէնքին սովորութեանը
28 պէս անոր վրայ ընեն, Ինքն ալ
զանիկայ իր գիրկը առաւ, և օրհնեց
29 զԱստուած ու ըսաւ. Ալ հիմա
ով Տէր՝ արձակես քու ծառադ
խաղաղութիւնով քու խօսքիդ
30 համեմատ. Վասն զի իմ աչքերս
31 տեսան քու փրկութիւնդ. Որ բո-
լոր ժողովուրդներուն առջեւ պատ-
32 րաստեցիր. Լոյս մը հեթանոսնե-
րը լուսաւորելու, և փառք քու
33 Իսրայէլ ժողովուրդիդ։ Եւ Յով-
սէփ ու անոր մայրը զարմացած
էին ան բաներուն վրայ, որ անոր
34 համար կը խօսուէին։ Ու Սիմէոն
օրհնեց զանոնք, և անոր մօրը Մա-
րիամին ըսաւ. Ահա աս մանուկը
Իսրայէլի մէջ շատ մարդոց իյ-
նալուն ու ելլելուն համար, Ու
հակառակութեան նպատակ մը ըլ-
35 լալու համար կեցած է. (Եւ քու
սրտէդ ալ թուր մը պիտի անցնի,)
որ [illegible] շատ սրտերէն խոր-
հուրդները յայտնուին։
36 Եւ հոն էր Աննա մարգարէն
Փանուէլի աղջիկը՝ Ասերի ցեղէն.
ասիկայ իր օրերը շատ անցուցած
էր՝ էրկանը հետ եօթը տարի կե-
նալով իր կուսութեանը ժամանա-
37 կէն, Եւ որբեւարի էր գրեթէ ութ-
սունեւչորս տարուան. որ տա-
ճարէն չէր զատուեր, հապա ծոմով
և աղօթքով Աստուծոյ ծառայու-
թիւն կ'ընէր գիշեր ու ցորեկ։
38 Եւ ասիկայ նոյն ժամուն եկաւ, ու
Տէրոջը գոհութիւն կու տար, ու
անոր վրայով կը խօսէր ան ամե-
նուն, որոնք Երուսաղէմի մէջ
փրկութեան կը սպասէին։
39 Ու երբոր ամէն բան կատարեցին
Տէրոջը օրէնքին համեմատ, նորէն
Գալիլեա դարձան՝ իրենց Նազա-
40 րէթ քաղաքը։ Եւ մանուկը կը
մեծնար ու հոգիով կը զօրանար՝

Ել. ժգ. 2։ ԺԲ. 29։ Ղև. 19; Թուոց. գ. 13։ ը. 17։ ժը. 15։
Ղև. ժբ. 2. 6. 8։
Ես. խ. 1։ Մար. ժե. 43։ Հմր 38։
Սաղ. ձթ. 45։ Եբր. ժա. 5։
Մատ. դ. 1։
Ծն. խզ. 30։ Փիլ. ա. 23։
Ես. ծր. 10։ Գլ. գ. 6։
Ես. թ. 2։ խբ. 6։ խթ. 6։ կ. 1. 2. 3։ Մատ. դ. 16։ Գոր. ժգ. 47։ իը. 28։
Ես. ը. 14։ Ովս. ժգ. 9։ Մատ. իա. 44։ Հռով. թ. 32. 33։ Ա Կոր. ա. 23. 24։ Բ Կոր. բ. 16։ Ա Պետ. բ. 7. 8։
Գոր. իը. 22։
Սաղ. խբ. 10։ Յով. ժթ. 25։
Գոր. իզ. 7։ Ա Տիմ. ե. 5։
Մար. ժե. 43։ Հմր 25։ Գլ. իդ. 21։
Հմր 52։ Գլ. ա. 80։

իմաստութեամբ լեցուած, ու Աս-
տուծոյ շնորհքը անոր վրայ էր։
41 Եւ անոր ծնողքը ամէն տարի
զատկի տօնին Երուսաղէմ կ'երթա-
42 յին։ Ու երբոր անիկայ տասուեր-
կու տարեկան եղաւ, տօնին սո-
վորութեանը պէս երբոր անոնք Ե-
43 րուսաղէմ ելան, Եւ ան օրերը որ
լմնցուցին՝ ու նորէն ետ դարձան,
Յիսուս մանուկը Երուսաղէմ մը-
նաց. և Յովսէփ ու անոր մայրը
44 չէին գիտեր. Հապա կարծելով
թէ անիկայ ճամբորդներուն հետն
է, մէկ օրուան ճամբայ գացին, ու
կը փնտռէին զանիկայ [illegible] ազ-
գականներուն և ճանչւորներուն
45 մէջը։ Ու երբոր չգտան, նորէն Ե-
րուսաղէմ դարձան՝ անիկայ փնտ-
46 ռելու։ Ու եղաւ որ իրեք օրէն
ետքը տաճարին մէջը գտան զանի-
կայ, որ վարդապետներուն հետ
նստեր էր, անոնց մտիկ կ'ընէր,
47 ու անոնց [illegible] կը հարցնէր։ Եւ
ամէն անոր ականջ դնողները կը
զարմանային անոր իմաստութեա-
նը ու պատասխաններուն վրայ։
48 Ու երբոր տեսան անիկայ, ապշած
մնացին. և անոր մայրը ըսաւ ա-
նոր. Որդեակ՝ ինչո՞ւ համար մեզի
այդպէս ըրիր. ահա քու հայրդ ու
ես՝ խիստ վշտացած քեզ կը փնտ-
49 ռէինք։ Եւ ըսաւ անոնց. Զիս
ինչո՞ւ կը փնտռէիք, չէի՞ք գիտեր
թէ ինծի պէտք է որ իմ Հօրս
50 [illegible] ըլլամ։ Եւ անոնք չհաս-
կըցան ան խօսքը՝ որ իրենց զրուցեց։
51 Եւ իջաւ անոնց հետ ու գնաց Նա-
զարէթ, և անոնց հնազանդ էր.
բայց անոր մայրը աս ամէն խօսքե-
րը իր սրտին մէջ կը պահէր։
52 Եւ Յիսուս կը զարգանար ի-
մաստութիւնով ու հասակով, և
Աստուծմէ ու մարդոցմէ շնորհք
գտնելով։

## ԳԼ. Գ

1 Յովհաննէսին քարոզութիւնը և մկրտութիւնը. 15 անոր վկայութիւնը Քրիստոսի համար։ 20 Հերովդէս կը բանտարկէ զՅովհաննէս։ 21 Քրիստոս կը մկրտուի, ու երկինքէն վկայութիւն կ'ըլլայ իրեն համար։ 23 Յիսուսի տարիքը, և անոր ազգաբանութիւնը Յովսեփէն մինչև Ադամ ելլելով։

1 Տիբերիոս կայսրին թագաւորու-
թեանը տասնըհինգերորդ տա-
րին՝ Պոնտացի Պիղատոսին Հը-
րէաստանի վրայ կուսակալութիւն
ըրած ատենը, ու Հերովդէսին՝ Գա-
լիլեացւոց վրայ չորրորդապետու-
թեան ատենը, և անոր եղբօրը
Փիլիպպոսին՝ Իտուրացւոց և Տը-
րաքոնացւոց երկրին վրայ չորրոր-
դապետութեան ատենը, և Լիւսա-
նիայի Աբիլինացւոց վրայ չորրոր-
2 դապետութեան ատենը, Ե- Ան-

Չորս տարի առաջ վերոյիշեալ թուականէն։
Յս. Տ. 8
Ել. իգ. 15. 17։ Ղգ. 23։ Բ Օր. ժզ. 1. 16։
Մատ. է. 28։ Մար. ա. 22։ Գլ. դ. 22. 32։ Յով. է. 15. 46։
Յով. բ. 16։
կամ՝ գործերուն մէջ
Գլ. թ. 45։ ժը. 34։
Հմր 19։ Դան. է. 28։
Ա Թագ. բ. 26։ Հմր 40։
Յս. Տ. 26
Յով. ժա. 49. 51։ ժը. 13։ Գոր. դ. 6։

Յամի Տեառն 26

Բ Մատ. գ. 1. Մար. ա. 4.
Գ Ղկ. ա. 77.
Դ Ես. խ. 3. Մատ. գ. 3. Մար. ա. 3. Յով. ա. 23.
Ե Սաղ. ղը. 2. Ես. ծբ. 10. Ղկ. բ. 10.
Զ Մատ. գ. 7.
Է Մատ. է. 19.
Ը Գոր. բ. 37.
Թ Ղկ. ժա. 41. Բ Կոր. ը. 14. Յակ. բ. 15. 16. Ա Յով. գ. 17. դ. 20.
Ժ Մատ. իա. 32. Ղկ. է. 29.
ԺԱ Ղկ. ժթ. 8.
ԺԲ Ել. իգ. 1. Ղև. ժթ. 11.
ԺԳ Մատ. գ. 11.

նայի ու Կայիափայի քահանայա-
պետութեան ատենը՝ Աստուծոյ
խօսքը եղաւ Զաքարիայի որդւոյն
Յովհաննէսին վրայ՝ անապատին
3 մէջ ։ Բ Ու անիկայ եկաւ Յորդա-
նանու բոլոր կողմերը . և ապաշխա-
րութեան մկրտութիւն կը քարո-
զէր Գ մեղաց թողութեան համար .
4 Ինչպէս որ Եսայի մարգարէին խօս-
քերուն գրքին մէջ գրուած է՝ ըսե-
լով . Դ Անապատի մէջ կանչողին
ձայնը , Տէրոջը ճամբան պատրաս-
տեցէ՛ք , անոր շաւիղները շիտկե-
5 ցէ՛ք . Ամէն ձոր պիտի լեցուի , և
ամէն լեռ ու բլուր պիտի ցածնայ ,
և ծուռը պիտի շիտկուի , ու խորտ-
ուբորտ տեղերը հարթ ճամբաներ
6 պիտի ըլլան . Ե Եւ ամէն մարմին Աս-
տուծոյ փրկութիւնը պիտի տեսնէ ։
7 Ու իրմէն մկրտուելու ելլող ժո-
ղովուրդներուն ըսաւ . Զ Իժերու
ծնունդներ՝ ո՞վ իմացուց ձեզի գա-
8 լու բարկութենէն փախչիլ ։ Ու-
րեմն ապաշխարութեան արժանա-
ւոր պտուղներ բերէ՛ք , և մի՛ ըս-
կսիք ձեր ներսի դին ըսել թէ ,
Մենք մեզի հայր՝ Աբրահամը ու-
նինք . քանզի կ՚ըսեմ ձեզի , որ
Աստուած կարող է ասո քարերէս
Աբրահամին որդիներ հանելու ։
9 Ալ հիմա կացինը ծառերուն ար-
մատին քովը կը դրուի . Է ուստի
ամէն ծառ որ բարի պտուղ չը-
բերեր , կը կտրուի ու կրակը կը
10 ձգուի ։ Եւ ժողովուրդները կը
հարցընէին իրեն՝ ու կ՚ըսէին . Ու-
11 րեմն Ը ի՞նչ ընենք ։ Պատասխան
տուաւ՝ ու ըսաւ անոնց . Թ Ով որ
երկու հանդերձ ունի , թող մէկը
չունեցողին տայ . և ով որ կերա-
12 կուր ունի , նոյնպէս ընէ ։ Ժ Մաք-
սաւորներ ալ եկան մկրտուելու ,
ու ըսին անոր . Վարդապետ՝ մենք
13 ի՞նչ ընենք ։ Ան ալ ըսաւ ա-
նոնց . Ձեզի հրամայուածէն ԺԱ ա-
14 ւելի բան չպահանջէ՛ք ։ Զինուոր-
ներն ալ կը հարցընէին անոր՝ ու
կ՚ըսէին . Եւ մենք ի՞նչ ընենք .
ըսաւ անոնց . Մէկը մի՛ հարստա-
հարէ՛ք , ԺԲ և մէկուն մը վրայ զրպար-
տութիւն մի՛ ընէ՛ք , ու ձեր թոշա-
կովը բաւականացէ՛ք ։
15 Երբոր ժողովուրդը կը սպասէր ,
և ամէնքը իրենց սրտերուն մէջ կը
մտածէին Յովհաննէսին համար՝
թէ ա՞ս է արդեօք Քրիստոսը ,
Յովհաննէս պատասխան տուաւ
16 ամենուն՝ ու ըսաւ . ԺԳ Ես ձեզ ջը-
րով կը մկրտեմ . բայց ինծմէ ա-
ւելի զօրաւորը կու գայ , որ ես ա-
նոր կօշիկներուն կապերը քակելու
արժանի չեմ . անիկայ ձեզ պիտի
մկրտէ Հոգւով Սրբով և կրակով .

Յամի Տեառն 26

ԺԴ Միք. դ. 12. Մատ. ժգ. 30.
Յա. Տ. 30
ԺԵ Մատ. ժդ. 3. Մար. զ. 17.
Յա. Տ. 27
ԺԶ Մատ. գ. 13. Յով. ա. 32.
Յա. Տ. 26
ԺԷ Թու. դ. 3. 35. 39. 43. 47.
ԺԸ Մատ. ժգ. 55. Յով. զ. 42.
ԺԹ Զաք. ժբ. 12.
Ի Բ Թագ. ե. 14. Ա Մն. գ. 5.
ԻԱ Հռութ. դ. 18. Ա Մն. բ. 10. Ա.
ԻԲ Ծն. ժա. 24. 26.
ԻԳ Ծն. ժա. 12.
ԻԴ Ծն. ե. 6. Ա. ժա. 10. Ա.

17 Որուն հեծանոցը իր ձեռքն է , և
իր կալը պիտի մաքրէ , ԺԴ ու ցորենը
իր ամբարը պիտի ժողվէ , և յարդը
չմարելու կրակով՝ պիտի այրէ ։
18 Ուրիշ շատ բաներ ալ կը քարո-
զէր՝ ժողովուրդը յորդորելով ։
19 ԺԵ Բայց Հերովդէս չորրորդապետը
անկէ յանդիմանուելով իր եղբօրը
կնկանը Հերովդիային համար , և
բոլոր չարութիւններուն համար՝ որ
20 Հերովդէս գործեց , Ան ամենուն
վրայ ասիկա ալ աւելցուց , որ Յով-
հաննէսը բանտի մէջ գոցեց ։
21 Ու երբոր մկրտուեցաւ բոլոր ժո-
ղովուրդը , ԺԶ և Յիսուս ալ մկըր-
տուելով՝ աղօթք կ՚ընէր , երկինքը
22 բացուեցաւ . Եւ Սուրբ Հոգին
մարմնաւոր երևոյթով աղաւնիի
պէս անոր վրայ իջաւ , ու երկին-
քէն ձայն մը եկաւ՝ որ կ՚ըսէր .
Դուն ես իմ սիրելի Որդիս , քեզի
հաւնեցայ ։
23 Եւ ինքը Յիսուս սկսեր էր ԺԷ գը-
րեթէ երսուն տարեկան ըլլալ , որ
( ինչպէս կը կարծուէր ) ԺԸ ինքը
Յովսեփին որդին էր , որ ան Հե-
24 ղիին , որ ան Մատաթին , Որ ան
Ղևիին , որ ան Մեղքիին , որ ան
25 Յաննէին , որ ան Յովսեփին , Որ
ան Մատաթիային , որ ան Ամով-
սին , որ ան Նաւումին , որ ան
26 Եսղիին , որ ան Նանգէին , Որ ան
Մաաթին , որ ան Մատաթիային ,
որ ան Սեմէիին , որ ան Յովսեփին ,
27 որ ան Յուդային , Որ ան Յով-
հաննային , որ ան Ռեսային , որ ան
Զօրաբաբելին , որ ան Սաղաթիե-
28 լին , որ ան Ներիին , Որ ան Մեղ-
քիին , որ ան Ադդիին , որ ան Կով-
սամին , որ ան Եղմովդադին , որ
29 ան Էրին , Որ ան Յովսէսին , որ
ան Եղիազարին , որ ան Յովրիմին ,
որ ան Մատաթին , որ ան Ղևիին ,
30 Որ ան Սիմէօնին , որ ան Յուդա-
յին , որ ան Յովսեփին , որ ան
Յովնանին , որ ան Եղիակիմին ,
31 Որ ան Մելեային , որ ան Մայնա-
նին , որ ան Մատաթային , ԺԹ որ
ան Նաթանին , Ի որ ան Դաւիթին ,
32 ԻԱ Որ ան Յեսսէին , որ ան Ովբեդին ,
որ ան Բոոսին , որ ան Սաղմոնին ,
33 որ ան Նաասոնին , Որ ան Ամինա-
դաբին , որ ան Արամին , որ ան
Եսրոնին , որ ան Փարեսին , որ ան
34 Յուդային , Որ ան Յակոբին , որ
ան Իսահակին , որ ան Աբրահա-
մին , ԻԲ որ ան Թարային , որ ան
35 Նաքովրին , Որ ան Սերուգին , որ
ան Ռագաւին , որ ան Փաղեկին ,
որ ան Եբերին , որ ան Սաղային ,
36 ԻԳ Որ ան Կայնանին , որ ան Արփաք-
սադին , ԻԴ որ ան Սեմին , որ ան Նո-
37 յին , որ ան Ղամեքին , Որ ան Մա-

Ցամ Տեառն 26

Թուսաղային, որ ան Ենովքին,
որ ան Ցարեդին, որ ան Մաղաղիէ-
38 լին, որ ան Կայնանին, Որ ան Ե-
նովսին, որ ան Սէթին, որ ան Ա-
դամին, Նոր ան Աստուծոյ:

ՆԾն. Ե. 1. 2:

## ԳԼ. Դ

1 Քրիստոս ծոմ կը պահէ և կը փորձուի. 13 կը յաղթէ Սատանային. 14 կը սկսի քարոզել: 16 Նազարեթի մարդիկը կը զարմանան անոր շնորհալից խօսքերուն վրայ: 33 Յիսուս կը բժշկէ դիւահար մը. 38 Պետրոսին զոքանչը, 40 և ուրիշ շատ հիւանդներ: 41 Դեւերը կը խոստովանին թէ անիկայ է Քրիստոսը, բայց կը յանդիմանուին անկէ: 43 Քրիստոս կը քարոզէ քաղաքներուն մէջ:

1 Եւ ᵃՅիսուս Հոգւով Սրբով լե-
ցուած՝ Յորդանանէն դարձաւ,
ᵇՈւ Հոգիէն անապատը տարուե-
2 ցաւ, Եւ քառսուն օր Սատանա-
յէն փորձուեցաւ. ᶜՈւ ան օրերը
բան մը չկերաւ. և ան օրերը լմըն-
նալէն ետև՝ անօթեցաւ:
3 Ու Սատանան ըսաւ անոր. Թէ
որ Աստուծոյ Որդին ես, ըսէ ատ
4 քարին որ հաց ըլլայ: Եւ Յիսուս
պատասխան տուաւ անոր ու ը-
սաւ. ᵈԳրուած է թէ, Ո՛չ միայն
հացով կ՚ապրի մարդ, հապա Աս-
տուծոյ ամէն խօսքովը:
5 Եւ Սատանան մէկ բարձր լեռ մը
հանելով զանիկայ, աշխարհի բո-
լոր թագաւորութիւնները ցուցուց
6 անոր մէկ վայրկեանի մը մէջ. Եւ
Սատանան ըսաւ անոր. Աս ամէն
իշխանութիւնը ու անոնց փառքը
քեզի պիտի տամ, ᵉԻնչու որ ինծի
յանձնուած է. և որու որ ուզեմ՝
7 կու տամ անիկայ. Ուստի թէ որ
դուն իմ առջիս ինկնաս երկրպագու-
թիւն ընես, ամէնը քեզի ըլլայ:
8 Եւ Յիսուս պատասխան տուաւ ա-
նոր ու ըսաւ. *ᶠԳրուած է թէ,
Քու Տէր Աստուծոյդ երկրպագու-
թիւն ընես, ու միայն զանիկայ
պաշտես:
9 ᵍԵւ զանիկայ տարաւ Երուսա-
ղէմ, ու տաճարին աշտարակին
վրայ կայնեցուց, ու ըսաւ անոր.
Թէ որ դուն Աստուծոյ Որդին ես,
10 քեզ ասկէ վար ձգէ. Ինչու որ
ʰԳրուած է թէ, Իր հրեշտակնե-
րուն պիտի ապսպրէ քեզի համար՝
11 որ քեզ պահեն. Ու ձեռքերնուն
վրայ պիտի վերցընեն քեզ, որ չըլ-
12 լայ թէ ոտքդ քարի զարնես: Եւ
Յիսուս պատասխան տուաւ ու ը-
սաւ անոր. ⁱԸսուած է թէ՝ Քու
13 Տէր Աստուածդ չփորձես: Ու երբ-
որ Սատանան ամէն փորձութիւնը
կատարեց, ժամէն մը ետ կեցաւ
անկէ:
14 ʲԵւ Յիսուս ᵏՀոգիին զօրու-
թեամբը ˡԳալիլեա դարձաւ. ու
անոր համբաւը ան գաւառին ամէն

ᵃՄատ. Դ. 1: Մար. Ա. 12:
ᵇ Հմր 14: Գլ. Բ. 27:
ᶜԵլ. ԼԴ. 28: Գ Թագ. ԺԹ. 8:
ᵈՐ Օր. Ը. 3:
ᵉՅով. ԺԲ. 31: ԺԴ. 30: Յայտ. ԺԳ. 2, 7:
* Ոմանք՝ Ետևս իմ գնա Սատանայ. Ինչու որ գրուած
ᶠՐ Օր. Զ. 13: Ժ. 20:
ᵍՄատ. Դ. 5:
ʰՍաղ. ՂԱ. 11:
ⁱՐ Օր. Զ. 16:
ʲՅով. ԺԴ. 30: Եբր. Դ. 15:
ᵏՄատ. Դ. 12: Յով. Դ. 43:
Յա. Տ. 30
ˡ Հմր 1:
Գոր. Ժ. 37:

15 կողմերը տարածուեցաւ: Եւ ինքը
անոնց ժողովարաններուն մէջը կը
սորվեցընէր, ու ամէնէն կը փա-
ռաւորուէր:
16 Ու եկաւ ᵐՆազարէթ, ուր որ
ինքը մեծցած էր. և իր սովորու-
թեանը պէս ⁿՇաբաթ օրը մտաւ
ժողովարանը, ու ելաւ որ կարդայ:
17 Եւ տուին անոր Եսայի մարգա-
րէին գիրքը. ու երբոր գիրքը բա-
ցաւ, գտաւ ան տեղը՝ ուր որ գը-
18 րուած էր. ᵒՏէրոջը Հոգին իմ վը-
րաս է. †ինչու որ՝ զիս օծեց աղ-
քատներուն աւետարան քարոզե-
լու. զիս խրկեց կոտրած սիրտ ու-
19 նեցողները բժշկելու. Գերիներուն
ազատութիւն, և կոյրերուն տե-
սութիւն քարոզելու, հարստահա-
րութիւն կրողները ազատ թող
տալու, Տէրոջը ընդունելի տարին
20 քարոզելու: Եւ գիրքը գոցելով՝
տուաւ սպասաւորին ու նստաւ. և
ժողովարանը եղողներուն ամէնը
աչքերնին տնկած անոր կը նայէին:
21 Եւ սկսաւ անոնց ըսել. Այսօր աս
գրուածը կատարուեցաւ, ձեր
22 ականջները լսեցին: Եւ ամէնը
անոր վրայ կը վկայէին, ᵖՈւ կը
զարմանային անոր բերնէն ելած շը-
նորհալի խօսքերուն վրայ՝ ու կ՚ը-
սէին. ᵠԱսիկայ Յովսէփին որդին
23 չէ՞: Եւ ըսաւ անոնց. Իրաւ որ
դուք ինծի պիտի ըսէք աս առա-
կը. Բժիշկ՝ քու անձդ բժշկէ. ʳՈր-
չափ բաներ լսեցինք որ Կափառնա-
յումի մէջ եղաւ, ˢհոս ալ ըրէ
24 քու քաղաքիդ մէջ: Եւ ըսաւ.
Ճշմարիտ կ՚ըսեմ ձեզի թէ, ᵗՄար-
գարէ մը իր քաղաքին մէջ ընդու-
25 նելի չէ: Եւ յիրաւի կ՚ըսեմ ձե-
զի, ᵘԹէ շատ որբևարիներ կային
Եղիային օրերը Իսրայէլի մէջ,
երբոր իրեք տարի ու վեց ամիս
երկինքը գոցուեցաւ, անանկ որ
մեծ սով եղաւ բոլոր երկրին մէջ.
26 Բայց Եղիան անոնցմէ մէկուն չը-
խրկուեցաւ, հապա միայն Սի-
դոնացւոց Սարեփթա քաղաքին մէջ
27 որբևարի կնկան մը: ᵛԵւ շատ
բորոտներ կային Իսրայէլի մէջ
Եղիսէ մարգարէին ատենը. ու
անոնցմէ մէկը չմաքրուեցաւ, հա-
պա միայն Նէեման Ասորին:
28 Եւ ժողովարանին մէջ ամէնքն ալ
բարկութիւնով լեցուեցան՝ երբոր
29 աս խօսքերը լսեցին. Ու ելան ա-
նիկայ քաղաքէն դուրս հանեցին,
և տարին զանիկայ մինչև ան լեռանը
ցցուած ծայրը, որուն վրայ իրենց
քաղաքը շինուած էր, որ զանիկայ
30 բարձր տեղէն վար ձգեն: ʷԲայց
ինքը անոնց մէջէն անցաւ գնաց:
31 ˣԵւ իջաւ Գալիլեայի Կափառնա-

Ցամ Տեառն 30

Յա. Տ. 31
ᵐՄատ. Բ. 23: ԺԳ. 54: Մար. Զ. 1:
ⁿԳոր. ԺԳ. 14: ԺԷ. 2:
ᵒԵսա. ԿԱ. 1:
† Կամ՝ անոր համար
ᵖՍաղ. ԽԵ. 2: Մատ. ԺԳ. 54: Մար. Զ. 2: Գլ. Բ. 47:
ᵠՅով. Զ. 42:
ʳՄատ. Դ. 13: ԺԱ. 23:
ˢՄատ. ԺԳ. 54: Մար. Զ. 1:
ᵗՄատ. ԺԳ. 57: Մար. Զ. 4: Յով. Դ. 44:
ᵘԳ Թագ. ԺԷ. 9: ԺԸ. 1: Յակ. Ե. 17:
ᵛԴ Թագ. Ե. 14:
ʷՅով. Ը. 59: Ժ. 39:
ˣՄատ. Դ. 13: Մար. Ա. 21:

Յամ. Տեառն 31

յում քաղաքը . ու շաբաթ օրերը
32 կը սորվեցընէր անոնց ։ Եւ կը
զարմանային անոր վարդապետու-
թեանը վրայ . դ ինչու որ իշխանու-
33 թիւնով էր անոր խօսքը ։ Ե Եւ
ժողովարանին մէջ մարդ մը կար ,
որ պիղծ դեւի ոգի ունէր , ու մեծ
34 ձայնով մը աղաղակեց՝ ըսելով .
Թող տուր , դուն մեզի հետ ի՞նչ
բան ունիս՝ Յիսուս Նազովրեցի .
միթէ մեզ կորսընցընելո՞ւ եկար .
զ գիտեմ քեզ ով ես , է Աստուծոյ
35 Սուրբը ։ Եւ Յիսուս սաստեց ա-
նոր ըսելով . Պապանձէ՛ ու ել
անկէ . ու դեւը զանիկայ ժողովրդեան
մէջտեղը գետինը
զարկաւ , և ելաւ անկէ , ու վնաս
36 մը չտուաւ անոր ։ Եւ զարմանք
եկաւ ամենուն վրայ . և իրարու
հետ կը խօսէին ու կ'ըսէին . Աս
ի՞նչ խօսք է , որ իշխանութիւնով
և զօրութիւնով կը հրամայէ պիղծ
37 ոգիներուն , ու կ'ելլեն ։ Եւ ա-
նոր համբաւը տարածուեցաւ չրջա-
կայ գաւառին ամէն տեղերը ։
38 Ը Ու ժողովարանէն ելլելով Սի-
39 մոնին տունը մտաւ ։ Սիմոնին զո-
քանչն ալ սաստիկ ջերմով կը տան-
ջուէր , ու անոր համար աղաչեցին
40 իրեն ։ Եւ Յիսուս անոր վրայ
կայնելով՝ սաստեց ջերմին , որ թո-
ղուց զանիկայ . և շուտ մը ելաւ ,
ու անոնց սպասաւորութիւն կ'ը-
նէր ։
41 Թ Եւ արեւը մարը մտած ատենը՝
ամէն անոնք որ ունէին տեսակ տե-
սակ ցաւերով հիւանդներ , իրեն
բերին զանոնք . ինքն ալ անոնցմէ
ամէն մէկուն վրայ ձեռք դնելով՝
42 բժշկեց զանոնք ։ Ժ Դեւեր ալ կ'ել-
լէին շատերէն , կ'աղաղակէին ու
կ'ըսէին թէ , Դուն ես Քրիստոս՝
Աստուծոյ Որդին . ԺԱ և ինքը կը
սաստէր՝ ու թող չէր տար անոնց
որ խօսին , ինչու որ գիտէին թէ
ինքը Քրիստոսն է ։
43 ԺԲ Ու երբոր ցորեկ եղաւ , ելաւ
ու գնաց անապատ տեղ մը , և
ժողովուրդները կը փնտռէին զա-
նիկայ . եկան մինչև անոր , ու կը
ստիպէին զանիկայ որ իրենցմէ չեր-
թայ , բայց անիկայ ըսաւ անոնց .
44 Պէտք է ինծի՝ որ ուրիշ քաղաքնե-
րու ալ Աստուծոյ թագաւորու-
թիւնը քարոզեմ . քանզի ասոր հա-
45 նիս համար ղրկուած եմ ։ ԺԳ Ու
Գալիլեայի ժողովարաններուն մէջ
կը քարոզէր ։

դ Մատ. Է. 28, 29. Տիտ. Բ. 15. Ե Մար. Ա. 23.
զ Հմր 42.
է Սաղ. ԺԶ. 10. Դան. Թ. 24. Գլ. Ա. 35.
Ը Մատ. Ը. 14. Մար. Ա. 29.
Թ Մատ. Ը. 16. Մար. Ա. 32.
Ժ Մար. Ա. 34. Գ. 11.
ԺԱ Մար. Ա. 25. 34. Հմր 34, 35.
ԺԲ Մար. Ա. 35.
ԺԳ Մար. Ա. 39.

## ԳԼ. Ե

1 Քրիստոս Պետրոսի նաւը նստած կը սորվեցընէ ժողովրդոց . 4 և ձկանց հրաշալի որսով մը կը ցուցընէ թէ Պետրոսը ու անոր ընկերները մարդոց որսորդներ պիտի ըլլան ։ 12 Քրիստոս բորոտը կը մաքրէ . 16 անապատ տեղ մը քաշուած՝ աղօթք կ'ընէ . 18 անդամալոյծ մը կը բժշկէ . 27 իրեն կը կանչէ Մատթէոս մաքսաւորը . 29 մեղաւորներու հետ հաց կ'ուտէ . 34 և կը նախաձայնէ թէ իր համբառնալէն ետեւ առաքեալները նեղութիւն պիտի կրեն ու ծոմ պահեն ։

1 Ա Ու եղաւ որ երբ ժողովուրդը
անոր բոլորտիքը դիզուեցաւ՝
Աստուծոյ խօսքը լսելու համար ,
ինքն ալ Գեննեսարեթի ծովակին
2 քովը կեցեր էր ։ Ու տեսաւ երկու
նաւեր՝ որ ծովակին քովը կեցեր
էին , և ձկնորսները անոնց մէջէն
ելած՝ ուռկանները կը լուային ։
3 Ինքը ան նաւերուն մէկուն մէջը
մտաւ՝ որ Սիմոնինն էր , և աղաչեց
անոր՝ որ քիչ մը ցամաքէն ծովուն
մէջը տանի . և նստելով՝ նաւուն
մէջէն ժողովուրդներուն կը սորվե-
ցընէր ։
4 Ու երբոր խօսելէն դադարեցաւ ,
ըսաւ Սիմոնին . Բ Առաջ տար նաւը
դէպ 'ի խորունկը , և ուռկաններ-
5 նիդ ձգեցէք ձուկ որսալու ։ Եւ
Սիմոն պատասխան տալով՝ ըսաւ
անոր . Վարդապետ՝ բոլոր գիշերս
աշխատեցանք , ու բան մը չբռնե-
ցինք . բայց քու խօսքիդ համար
6 ուռկանը ձգեմ ։ Ու երբոր ասը-
րին , խիստ շատ ձուկեր ժողվեցին
մէջը , ու իրենց ուռկանը կը պա-
7 տռուէր ։ Եւ աչք կ'ընէին մէկալ
նաւուն մէջ եղող իրենց ընկերնե-
րուն՝ որ գան օգնեն իրենց . և ե-
կան , ու երկու նաւերն ալ լեցու-
ցին , մինչև որ ընկղմելու մօտ էին ։
8 Սիմոն Պետրոս երբոր տեսաւ , Յի-
սուսի ծունկերուն ինկաւ՝ ու ըսաւ .
Տէ՛ր՝ Գ իմ քովէս մէկդի գնա , ին-
չու որ ես մեղաւոր մարդ մըն եմ ։
9 Վասն զի ապշութիւնը պատեց ա-
նիկայ և անոր հետը եղող ամէնը ,
ան իրենց բռնած ձուկերուն որսին
10 համար . Նոյնպէս ալ Զեբեդէոսին
որդիքը Յակոբոսը և Յովհաննէ-
սը , որոնք Սիմոնին ընկերներն էին .
ու Յիսուս ըսաւ Սիմոնին . Մի
վախնար , Դ ասկէ ետեւ մարդոց որ-
11 սորդ պիտի ըլլաս ։ Եւ նաւերը
ցամաքը հանելով՝ Ե ամէն բան թո-
ղուցին , ու անոր ետեւէն գացին ։
12 Զ Ու եղաւ որ երբ ինքը քաղաքի
մը մէջ էր , ահա մէկ մարդ մը բո-
րոտութիւնով լեցուն՝ երբոր Յի-
սուսը տեսաւ , երեսի վրայ իյնա-
լով աղաչեց անոր՝ ու ըսաւ . Տէ՛ր՝
թէ որ ուզես , կրնաս զիս մաքրել ։
13 Եւ Յիսուս իր ձեռքը երկընցընե-
լով դպաւ անոր , ու ըսաւ . Կ'ու-
զեմ՝ մաքրուէ՛ . և շուտ մը բորո-
14 տութիւնը անկէ գնաց ։ Է Ու ինքը
պատուիրեց անոր որ մէկու մը չը-
սէ , հապա ըսաւ . Գնա՛ քեզ քա-

Յամ. Տեառն 31

Ա Մատ. Դ. 18. Մար. Ա. 16.
Բ Յովհ. ԻԱ. 6.
Գ Բ Թագ. Զ. 9. Գ Թագ. ԺԷ. 18.
Դ Մատ. Դ. 19. Մար. Ա. 17.
Ե Մատ. Դ. 20. ԺԹ. 27. Մար. Ա. 18. Գլ. ԺԸ. 28.
Զ Մատ. Ը. 2. Մար. Ա. 40.
Է Մատ. Ը. 4.

Ցամ Տեառն 31

ըՂև. ժդ. 4, 10, 21, 22, բՄատ. դ. 25, Մար. գ. 7, Յոհ. գ. 2, գՄատ. ժդ. 23, Մար. զ. 46,

հանային ցուցուր, և Մովսէսին
պատուիրածին պէս քու մաքրուե-
լուդ ընծան տո՛ւր՝ անոնց վկայու-
15 թիւն ըլլալու համար ։ Եւ անոր
վրայով խօսքը աւելի կը տարա-
ծուէր . Ու շատ ժողովուրդներ
կը ժողվուէին մտիկ ընելու, և ա-
նով իրենց հիւանդութիւններէն
16 բժշկուելու ։ գՈւ ինքը անապատ
տեղուանք կը քաշուէր, և աղօթք
կ'ընէր ։
17 Ու եղաւ որ մէկ օր մը ինքը կը
սորվեցընէր, ու փարիսեցիներ և օ-
րինաց վարդապետներ նստած էին,
որոնք Գալիլեայի ու Հրէաստանի
ու Երուսաղէմի բոլոր գիւղաքա-
ղաքներէն ժողվուած էին . ու Տէ-
րոջը զօրութիւնը ներկայ էր անոնք

ԻՄատ. Թ. 2, Մար. բ. 3,

18 բժշկելու ։ ԻԵւ ահա քանի մը մար-
դիկ մէկ անդամալոյծ մարդ մը մա-
հիճովը բերին, և հնար կը փնտռ-
ուէին թէ ինչպէս զանիկայ ներս
խօթեն, ու դնեն անոր առջեւը .
19 Ու երբոր բազմութենէն ճամբայ
չէին գտներ՝ որ անկէ ներս խօթեն
անիկայ, տանիքին վրայ ելան, և
զանիկայ կղմինտրներուն մէջէն մա-
հիճովը մէջտեղը Յիսուսին առ-
20 ջեւը իջեցուցին ։ Եւ անիկայ տես-
նելով անոնց հաւատքը՝ ըսաւ ա-
նոր . Ո՛վ մարդ՝ քու մեղքերդ քե-

ըՄատ. Թ. 3, Մար. բ. 6, 7,

21 զի ներուած են ։ Եւ դպիրները
ու փարիսեցիները սկսան խորհիլ,
ու ըսել . Ո՞վ է ասիկայ, որ հայ-
հոյութիւններ կը խօսի . Ո՞վ

ԻԱաղ. լբ. 5, Եսա. խգ. 25,

կրնայ մեղաց թողութիւն տալ,
22 բայց միայն Աստուած ։ Եւ Յի-
սուս իմանալով անոնց խորհուրդ-
ները՝ պատասխան տուաւ ու ըսաւ
անոնց . Սրտերնուդ մէջ ի՞նչ կը
23 խորհիք ։ Ո՞րը աւելի դիւրին է .
Քու մեղքերդ քեզի ներուած են
ըսե՞լը, թէ Ելի՛ր ու քալէ՛ ըսելը ։
24 Բայց որպէս զի գիտնաք՝ թէ Որդին
մարդոյ իշխանութիւն ունի երկրի
վրայ մեղքերու թողութիւն տա-
լու, (ըսաւ անդամալոյծին,) Քե-
զի կ'ըսեմ, Ելի՛ր մահիճդ առ՝ ու
25 տո՛ւնդ գնա ։ Ան ալ իսկոյն անոնց
առջեւը ելաւ, ու վրան առաւ՝ ինչ
բանի վրայ որ պառկած էր, և գը-
նաց իր տունը, ու Աստուծոյ
26 փառք կու տար ։ Եւ ամէնքը
ապշած մնացին, ու Աստուծոյ
փառք կու տային . և վախով լե-
ցուած՝ կ'ըսէին թէ, Այսօր նո-
րանշան բաներ տեսանք ։

ծՄատ. Թ. 9, Մար. բ. 13, 14,

27 ծԵւ աս բաներէն ետեւ ելաւ ան-
կէ, ու տեսաւ մէկ մաքսաւոր մը՝
որուն անունը Ղեւի էր, որ մաքս
ընդունելու տեղը նստեր էր, ու
28 ըսաւ անոր . Ետեւէս եկուր ։ Ան
ալ թողուց ամէնը՝ և ելաւ գնաց
29 անոր ետեւէն ։ կՈւ Ղեւի անոր մեծ
կոչունք մը ըրաւ իր տանը մէջ .
հԵւ շատ բազմութիւն կար մաքսա-
ւորներու և ուրիշներու՝ որ անոնց
30 հետ սեղան նստեր էին ։ Եւ անոնց
դպիրները ու փարիսեցիները տըր-
տունջ կ'ընէին անոր աշակերտնե-
րուն ու կ'ըսէին . Ինչո՞ւ համար
մաքսաւորներուն և մեղաւորներուն
31 հետ կ'ուտէք ու կը խմէք ։ Եւ
Յիսուս պատասխան տալով՝ ը-
սաւ անոնց . Առողջներուն բժիշկ
պէտք չէ, հապա հիւանդներուն .
32 Ես յարդարները կանչելու չեկայ,
հապա մեղաւորները ապաշխարու-
թեան ։
33 Անոնք ալ ըսին անոր . Ինչո՞ւ
Յովհաննէսին աշակերտները շատ
անգամ ծոմ կը պահեն, և ա-
ղօթքներ կ'ընեն, նոյնպէս ալ փա-
րիսեցւոց աշակերտները . և քու-
կիններդ կ'ուտեն ու կը խմեն ։
34 Անիկայ ալ ըսաւ անոնց . Կրնա՞ք
հարսնիքին տղոցը ծոմ պահել
տալ՝ քանի որ փեսան իրենց հետն
35 է ։ Բայց օրեր պիտի գան՝ որ երբ
փեսան իրենցմէ վերցուի, հապա
36 ան օրերը ծոմ պիտի պահեն ։ ճԱ-
ռակ մըն ալ ըսաւ անոնց թէ,
Մէկը չձգեր նոր լաթի կտոր հին
հանդերձի վրայ . եթէ ոչ՝ ան նորը
պատռուածք ալ կ'ընէ, ու հին-
ցածին հետ ալ չմիաբանիր ան նոր
37 լաթէն եղած կտորը ։ Եւ մէկը
նոր գինին հին տիկերու մէջ չդներ .
եթէ ոչ՝ նոր գինին հին տիկերը
կը պատռէ, ինքը կը թափի, ու
38 տիկերը կը կորնչին . Հապա նոր
գինին նոր տիկերու մէջ դնելու է,
39 ու երկուքն ալ կը պահուին ։ Եւ
մէկը հին գինին խմելէն ետեւ՝ ան-
միջապէս նորը չուզեր . քանզի կ'ը-
սէ թէ՝ Հինը աւելի ախորժելի է ։

Ցամ Տեառն 31

կՄատ. Թ. 10, Մար. բ. 15, հԳլ. ժե. 1,

ՅՄատ. Թ. 13, Ա Տիմ. ա. 15,

ՂՄատ. Թ. 14, Մար. բ. 18,

ճՄատ. Թ. 16, 17, Մար. բ. 21, 22,

## ԳԼ. Զ

1 Քրիստոս շաբաթ օրուան պահպանութեանը վրայով փարիսեցւոց կուրութիւնը կը յանդիմանէ Սուրբ Գրոց վկայութեամբը՝ փաստով և հրաշքով . 13 տասներկու առաքեալները կ'ընտրէ . 17 հիւանդները կը բժշկէ . 20 ժողովրդոց առջեւը իր աշակերտներուն խօսելով՝ կը ցուցընէ թէ որո՛նց կը վայլէ երանութիւնը և որո՛նց վայը . 27 կը պատուիրէ թշնամին սիրել, 46 և Աստուծոյ խօսքին հնազանդելով՝ բարիք գործել, որ չըլլայ թէ առանց հիման հողի վրայ շինուած տան մը պէս կործանինք փորձութեան օրը ։

ՏՄատ. ժբ. 1, Մար. բ. 23,

1 Ու եղաւ որ երկրորդ առաջին
շաբաթ օրը՝ ինքը արտերուն
մէջէն կ'անցնէր, և իր աշակերտները
ցորենի հասկեր փրցընելով, ձեռքեր-
նուն մէջ կը շփէին ու կ'ուտէին ։
2 Ու փարիսեցիներէն ոմանք ըսին
անոնց . Ատ ի՞նչ բան կ'ընէք, Բոր

ԲԵլ. ի. 10,

3 արժան չէ ընել շաբաթ օրը ։ Եւ
Յիսուս պատասխան տալով անոնց

Յամ Տեառն 31

ա Ա Թագ. իա. 6։
բ Ղև. իդ. 9։
գ Մատ. ժբ. 9։ Մար. գ. 1։ Ղկ. ժգ. 14։ ժդ. 3։ Յովհ. թ. 16։

ըսաւ. Չէ՞ք կարդացեր դուք զԴա-
ւիթին ըրածը, երբոր անօթեցաւ
ինքը՝ և անոնք որ իր հետն էին.
4 Ինչպէս անիկայ Աստուծոյ տունը
մտաւ, և առաջաւորութեան հա-
ցերը առաւ ու կերաւ, և տուաւ
անոնց ալ՝ որ իր հետն էին. բ որ
զանոնք մէ օրինաւոր չէ ուտել, բայց
5 միայն քահանաներուն։ Եւ ըսաւ
անոնց. Որդին մարդոյ շաբաթին
ալ Տէրն է։
6 գ Ու եղաւ որ ուրիշ շաբաթ օր
մըն ալ ինքը ժողովարանը մտաւ՝
ու կը սորվեցընէր. և հոն մարդ մը
կար, որուն աջ ձեռքը չորցած
7 էր։ Եւ դպիրները ու փարիսե-
ցիները անոր կը սպասէին՝ որ շա-
բաթ օրը զանիկայ բժշկէ, որպէս
զի ամբաստանութեան առիթ մը
8 գտնեն անոր դէմ։ Իսկ ինքը
գիտնալով անոնց խորհուրդները,
ըսաւ այն մարդուն՝ որուն ձեռքը
չորցած էր. Ելի՛ր՝ մէջտեղը կայնէ.
9 ան ալ ելաւ կայնեցաւ։ Ան ա-
տենը Յիսուս ըսաւ անոնց. Ձեզի
բան մը հարցընեմ. Շաբաթ օրը
ի՞նչ արժան է, բարի՞ք ընել,
թէ չարիք ընել. հոգի մը ապրե-
10 ցընե՞լ, թէ մեռցընել։ Եւ չուր-
ջանակի՝ ամենուն վրայ նայելով՝
ըսաւ անոր. Ձեռքդ երկնցուր.
ան ալ այնպէս ըրաւ. ու անոր
ձեռքը ողջացաւ միւսին պէս։
11 Եւ անոնք կատաղութեամբ լե-
ցուեցան, ու իրարու հետ կը
խօսէին՝ թէ ինչ ընեն Յիսուսին։

դ Մատ. ժդ. 23։
ե Մատ. ժ. 1։
զ Յովհ. ա. 42։
է Յուդ. 1։
ը Մատ. դ. 25։ Մար. գ. 7։

12 դ Եւ եղաւ որ ան օրերը լեռը
ելաւ աղօթք ընելու, ու բոլոր
գիշերը Աստուծոյ աղօթք ընելով
13 անցուց։ Ու երբոր առտու եղաւ,
կանչեց իր աշակերտները, ե ու ա-
նոնցմէ տասուերկու հոգի ընտրեց,
որոնք առաքեալ ալ անուանեց.
14 Սիմոնը՝ զ որն որ Պետրոս ալ անուա-
նեց, և անոր եղբայրը Անդրէասը,
Յակոբոսը ու Յովհաննէսը, Փիլիպ-
15 պոսը և Բարթողիմէոսը, Մատ-
թէոսը և Թովմասը, Ալփէոսեան
Յակոբոսը և Նախանձայոյզ ը-
16 սուած Սիմոնը, է Յակոբոսին եղ-
բայրը Յուդան և Իսկարիովտացի
Յուդան՝ որ և մատնիչ եղաւ։
17 Եւ անոնց հետ իջնելով՝ մէկ տա-
փարակ տեղ մը կայնեցաւ. նաև իր
աշակերտներուն ժողովը՝ ը ու մեծ
բազմութիւն մը ժողովուրդներու
բոլոր Հրէաստանէն, ու Երու-
սաղէմէն, և Տիւրոսի ու Սիդոնի
18 ծովեզերքէն. Որոնք եկան անոր
խօսքերը մտիկ ընելու, ու իրենց
հիւանդութիւններէն բժշկուելու.
և պիղծ ոգիներէն նեղութիւն կրող-
ները ալ եկան, ու կը բժշկուէին։

19 Եւ բոլոր ժողովուրդը կ'ուզէր իրեն
դպչիլ. ժ ինչու որ զօրութիւն կ'ել-
լէր իրմէն, ու ամէնը կը բժշկէր։
20 Եւ ինքը իր աչքերը դէպ 'ի իր
աշակերտներուն վերցուց՝ ու ըսաւ.
ի Երանի՜ դուք աղքատներուդ, ին-
չու որ ձերն է Աստուծոյ թագա-
21 ւորութիւնը։ ծ Երանի՜ դուք՝ որ
հիմա անօթի էք, ինչու որ պիտի
կշտանաք. կ Երանի՜ դուք՝ որ հիմա
կու լաք, ինչու որ պիտի խնդաք։
22 հ Երանի է ձեզի երբոր մարդիկ ձեզ
ատեն, ու երբոր ձեզ իրենց ընկե-
րութենէն մերժեն՝ ու նախատեն,
և ձեր վրայով դէշ անուն հանեն
23 Որդւոյ մարդոյ պատճառովը։ ձ Ու-
րախ եղիք դուք ան օրը՝ ու ցնծա-
ցէք, որ ահա ձեր վարձքը շատ է
երկինքը. ղ վասն զի իրենց հայրերը
այդպէս կ'ընէին մարգարէներուն։
24 ճ Բայց վա՜յ ձեզի՝ հարուստներուդ,
մ ինչու որ ձեր մխիթարութիւնը
25 առած էք։ յ Վա՜յ ձեզի՝ որ կուշտ
էք, ինչու որ պիտի անօթենաք.
ն վա՜յ ձեզի որ հիմա կը ծիծաղիք,
ինչու որ սուգ պիտի ընէք ու լաք։
26 շ Վա՜յ ձեզի՝ երբոր ո մարդիկ ձեր
վրայով աղէկ խօսին, ինչու որ
իրենց հայրերը այդպէս կ'ընէին
սուտ մարգարէներուն։
27 չ Բայց կ'ըսեմ ձեզի՝ որ մտիկ
կ'ընէք. Սիրեցէք ձեր թշնամինե-
րը. ձեզ ատողներուն բարի ըրէք.
28 Ձեզ անիծողները օրհնեցէք, պ ձեզի
նեղութիւն տուողներուն համար
29 աղօթք ըրէք։ ջ Ան որ քու մէկ
ծնօտիդ կը զարնէ, միւսն ալ մօ-
տեցուր անոր. ռ և ան որ քու վե-
րարկուդ քեզմէ կը հանէ, մի՛ ար-
30 գիլեր անկէ շապիկդ ալ։ ս Ան
ամենուն որ քեզմէ կ'ուզէ՝ տո՛ւր,
ու քու բաներդ առնողէն ետ մի՛
31 պահանջեր։ վ Եւ ինչպէս կ'ու-
զէք որ մարդիկ ձեզի ընեն, դուք
32 ալ անոնց անանկ ըրէք։ տ Եւ թէ
որ դուք ձեզ սիրողները սիրէք՝
ի՞նչ շնորհ կ'ունենաք. ինչու որ
մեղաւորներն ալ կը սիրեն զիրենք
33 սիրողները։ Եւ թէ որ դուք ձեզի
բարի ընողներուն բարի ընէք,
ի՞նչ շնորհ կ'ունենաք. ինչու որ
մեղաւորներն ալ նոյն բանը կ'ը-
34 նեն։ ր Եւ թէ որ անանկ մարդիկ-
ներու փոխ տաք՝ որոնցմէ յոյս ու-
նիք առնելու, ի՞նչ շնորհ կ'ու-
նենաք. ինչու որ մեղաւորներն ալ
մեղաւորներուն փոխ կու տան, որ
35 նոյն չափովը ետ առնեն։ ց Հապա
սիրեցէք դուք ձեր թշնամիները,
ու բարի ըրէք. ւ և փոխ տուէք
առանց փոխարէնի մը սպասելու.
և ձեր վարձքը շատ պիտի ըլլայ.
ու փ Բարձրելոյն որդիքը պիտի ըլ-

Յամ Տեառն 31

թ Մատ. ժդ. 36։ Մար. ե. 30։ Ղկ. ը. 46։
ի Մատ. ե. 3։ ժա. 5։ Յակ. բ. 5։
ծ Ես. ծե. 1։ կե. 13։ Մատ. ե. 6։
կ Ես. կա. 3։ Մատ. ե. 4։
հ Մատ. ե. 11։ Ա Պետ. բ. 19։ դ. 14։ դ. 14։
ձ Յով. ժզ. 2։
ղ Մատ. ե. 12։ Գործ. է. 41։ Կող. ա. 24։ Յակ. ա. 2։
ղ Գործ. է. 51։
ճ Ամով. զ. 1։ Յակ. ե. 1։
մ Ղկ. ժբ. 21։
յ Մատ. զ. 2. 5. 16։ Ղկ. ժզ. 25։
ն Ես. կե. 13։
շ Առակ. ժդ. 13։
ո Յով. ժե. 19։ Ա Յով. դ. 5։
չ Ոմանք՝ բոլոր մարդիկ
պ Ել. իգ. 4։ Առակ. իե. 21։ Մատ. ե. 44։ Հռ. ժբ. 20։
ջ Ղկ. իգ. 34։ Գործ. է. 59։
ռ Մատ. ե. 39։
ս Ա Կոր. զ. 7։
վ Բ Օր. ժե. 7. 8. 10։ Առակ. իա. 26։ Մատ. ե. 42։
տ Մատ. է. 12։
ր Մատ. ե. 46։
ց Մատ. ե. 45։
ւ Հռ. 27։
փ Սաղ. լէ. 26։ Հռ. 30։
ք Մատ. ե. 45։

Ցամ Տեառն 31

ա Մատ. Ե. 48։
բ Մատ. Է. 1։
գ Առակ ԺԹ. 17։
դ Սաղ. ՀԹ. 12։
ե Մատ. Է. 2։ Մար. Դ. 24։ Յակ. Բ. 13։
զ Մատ. ԺԵ. 14։
է Մատ. Ժ. 24։ Յով. ԺԳ. 16։ ԺԵ. 20։
ը Մատ. Է. 3։
թ Տես Առակ. ԺԸ. 17։
ժ Մատ. Է. 16. 17։
ի Մատ. ԺԲ. 33։
լ Մատ. ԺԲ. 34։
խ Մատ. ԺԲ. 34։
ծ Մաղ. Ա. 6։ Մատ. Է. 21։ Իս. 11։ Գղ. ԺԴ. 25։
կ Մատ. Է. 24։

լաք · ինչու որ անիկայ բարերար է
ապերախտներուն ու չարերուն ։
36 [ա]Ուրեմն գթած եղիք՝ ինչպէս որ
37 ձեր Հայրն ալ գթած է ։ [բ]Մի
դատէք, ու պիտի չդատուիք · մի
դատապարտէք, ու պիտի չդատա-
պարտուիք · ներեցէք, ու ձեզի
38 պիտի ներուի · [գ]Տուէք՝ ու ձեզի
պիտի տրուի · աղէկ չափով՝ կո-
խուած՝ ցնցուած՝ լեփլեցուն պիտի
տրուի [դ]ձեր ծոցը · [ե]քանզի այն չա-
փովը՝ որով դուք կը չափէք, ձեզի
պիտի չափուի ։
39 Առակ մըն ալ ըսաւ անոնց ·
[զ]Միթէ կոյրը կոյրին կրնա՞յ ա-
ռաջնորդութիւն ընել · չէ՞ որ եր-
կուքն ալ փոսը պիտի իյնան ։
40 [է]Աշակերտը իր վարդապետէն մեծ
չէ · բայց ամէն կատարելապէս
վարժուածը իր վարդապետին պէս
կ'ըլլայ ։
41 [ը]Եւ ինչո՞ւ քու եղբօրդ աչքին
մէջի շիւղը կը տեսնես, ու քու աչ-
քիդ մէջի գերանին չես նայիր ։
42 Կամ ի՞նչպէս կրնաս ըսել քու
եղբօրդ · Եղբա՛յր՝ թո՛ղ տուր որ
աչքիդ մէջի շիւղը հանեմ. և դուն
քու աչքիդ մէջի գերանը չես տես-
ներ · կեղծաւոր՝ [թ]առաջ քու աչ-
քէդ գերանը հանէ, ու ետքը պիտի
նայիս քու եղբօրդ աչքին մէջի շիւ-
43 ղը հանելու ։ [ժ]Ինչու որ չկայ բարի
ծառ մը՝ որ չար պտուղ բերէ · ոչ
ալ չար ծառ մը՝ որ բարի պտուղ
44 բերէ · [ի]Վասն զի ամէն ծառ իր
պտուղէն կը ճանչցուի · ինչու որ
փուշերէն թուզ չեն քաղեր, ու
մորենիէն խաղող չեն ժողվեր ։
45 [լ]Բարի մարդը իր սրտին բարի գան-
ձէն բարութիւն կը բղխէ, և չար
մարդը իր սրտին չար գանձէն չա-
րութիւն կը բղխէ · [խ]ինչու որ իր
բերանը սրտին աւելցուքէն կը խօ-
սի ։
46 [ծ]Եւ ինչո՞ւ զիս Տէր Տէր՝ կը կո-
չէք, ու ըսած բաներս չէք կատա
47 րեր ։ [կ]Ան ամէնը որ ինծի կու գայ՝
և իմ խօսքերս կը լսէ՝ ու անոնք
կը կատարէ, ձեզի ցուցընեմ թէ
48 որո՛ւ կը նմանի ։ Անիկայ տուն
շինող մարդու մը կը նմանի, որ
փորեց ու խորունկցուց, ու հիմը
վէմի վրայ դրաւ · և ջուրերուն
յորդած ատենը՝ գետը զարկաւ ան
տանը, ու չկրցաւ զանիկայ շար-
ժել · ինչու որ վէմի վրայ հաստա-
49 տուած էր ։ Բայց ան որ իմ խօս-
քերս կը լսէ՝ ու չկատարեր, կը
նմանի ան մարդուն՝ որ հողի վը-
րայ առանց հիմի տուն կը շինէ ·
որուն գետը զարկաւ, և շուտ մը
փլաւ, ու ան տանը կործանումը
մեծ էր ։

## ԳԼ. Է

1 Քրիստոս աւելի մեծ հաւատք կը գտնէ հեթանոս հարիւրապետի մը վրայ՝ քան թէ Հրէից վրայ · 10 անոր ծառան չտեսած կը բժշկէ · 11 Նային քաղաքէն եղող այրի կնկան մը զաւակը կը յարուցանէ · 19 իր հրաշքները յիշելով պատասխան կու տայ Յովհաննէսին խրկած մարդոցը · 24 Յովհաննէսին վրայով իր ունեցած գաղափարը կը յայտնէ՝ ժողովուրդին · 30 կը յանդիմանէ Հրէաները՝ որ ո՛չ Յովհաննէսին և ո՛չ իր վարմունքովը համոզուեցան · 36 կը ցուցընէ թէ ինքը բարեկամ է մեղաւորներուն, չէ՛ թէ զանոնք մեղաց մէջ պահելու, այլ անոնց մեղքերը ներելու, երբոր անոնք զեղջի գան ու հաւատան ։

Ցամ Տեառն 31

ա Մատ. Ը. 5։

1 Եւ երբոր իր բոլոր խօսքերը ժո-
ղովուրդին ականջներուն խօսելը
լմնցուց, [ա]մտաւ Կափառնայում ։
2 Եւ հարիւրապետի մը ծառայ ծանր
հիւանդացած՝ մօտ էր մեռնելու,
3 որ սիրելի էր անոր ։ Երբոր Յի-
սուսի վրայով լսեց, Հրէաներէն
ծերեր խրկելով, աղաչեց
անոր՝ որ գայ իր ծառան ապրեցը-
4 նէ ։ Անոնք ալ եկան Յիսուսին՝
և թախանձանօք կ'աղաչէին անոր,
ու կ'ըսէին թէ, Անիկայ արժանի է՝
5 որուն աս շնորհը պիտի ընես · ին-
չու որ մեր ազգը կը սիրէ, ու ժո-
6 ղովարանը անիկայ շինեց մեզի ։ Եւ
Յիսուս անոնց հետ գնաց · երբոր
տունէն շատ հեռու չէր, հարիւրա-
պետը խրկեց անոր բարե-
կամներ, ու ըսաւ անոր · Տէ՛ր՝ մի
յոգնիր, ինչու որ ես արժանի չեմ
որ դուն իմ յարկիս տակը մտնես ·
7 Անոր համար ես ինքզինքս ալ ար-
ժանի չսեպեցի քեզի գալու · հա-
պա խօսքո՛վ ըրուցէ, և իմ ծառաս
8 պիտի բժշկուի · Ինչու որ ես ալ
իշխանութեան տակ դրուած մարդ
մըն եմ, ու իմ հրամանիս տակը
զինուորներ ունիմ · և ասոր կ'ը-
սեմ՝ Գնա՛, ու կ'երթայ · և մէկա-
լին թէ՝ Եկո՛ւր, ու կու գայ, և
ծառայիս թէ՝ Աս բանը ըրէ, ու
9 կ'ընէ ։ Յիսուս աս բաները լսե-
լով՝ զարմացաւ անոր վրայ · և իր
ետեւէն գացող ժողովուրդին դար-
ձաւ ու ըսաւ · Ձեզի կ'ըսեմ, որ
Իսրայէլի մէջ անգամ ես այսչափ
10 հաւատք չգտայ ։ Ու պատգամա-
ւորները նորէն տուն դարձան, և
հիւանդ ծառան առողջացած գը-
տան ։
11 Ու եղաւ որ հետեւեալ օրը քա-
ղաք մը կ'երթար, որուն անունը
Նային էր · և անոր հետը կ'եր-
թային իր աշակերտներէն շատերը,
12 ու մեծ բազմութիւն ։ Ու երբոր
քաղաքին դրանը մօտեցաւ, ահա
մեռել մը դուրս կը հանէին, իր
մօրը մէկ հատիկ տղան · և անիկայ
որբեւայրի էր, ու քաղաքին շատ
13 ժողովուրդը անոր հետն էր ։ Եւ

Յամ Տեառն 31

Տէրը անիկայ տեսնելով՝ խղճաց
անոր վրայ ու ըսաւ անոր . Մի
14 լար ։ Եւ մօտենալով՝ դագաղին
դպաւ , ու տանողները կանգ ա-
ռին . և ըսաւ . Ո՛վ պատանի՛ քե-
15 զի կ'ըսեմ՝ բԵլի՛ր ։ Ու մեռելը ե-
լաւ նստաւ , և սկսաւ խօսիլ . ու
16 տուաւ զանիկայ իր մօրը ։ գԵւ ա-
մէնքն ալ վախով բռնուեցան . ու
զԱստուած կը փառաւորէին ըսե-
լով թէ , դՄեծ մարգարէ մը ելեր
է մեր մէջը . և թէ՝ եԱստուած իր
ժողովուրդին այցելութիւն ըրաւ ։
17 Եւ աս ձայնը իր վրայով՝ բոլոր
Հրէաստան ելաւ , ու բոլոր շրջա-
կայ տեղուանքը ։
18 զԵւ Յովհաննէսին պատմեցին իր
աշակերտները աս ամէն բաներուն
19 վրայով ։ Յովհաննէս ալ իր ա-
շակերտներէն երկուքը իրեն կան-
չեց , և զանոնք Յիսուսին խրկեց՝
ըսելով . Դուն ա՞ն ես՝ որ գալու
էիր , թէ ուրիշի մը սպասենք ։
20 Եւ ան մարդիկը եկան անոր՝ ու ը-
սին . Յովհաննէս մկրտիչը մեզ
խրկեց քեզի , ու կ'ըսէ . Դուն
ա՞ն ես՝ որ գալու էիր , թէ ուրիշի
21 մը սպասենք ։ Եւ նոյն ժամուն
շատերը բժշկեց իրենց հիւանդու-
թիւններէն՝ ու հարուածներէն և
չար ոգիներէն , ու շատ կոյրերու
22 տեսութիւն շնորհեց ։ Եւ Յիսուս
էպատասխան տալով՝ անոնց ըսաւ .
Գացէք Յովհաննէսին պատմեցէք
ինչ որ տեսաք ու լսեցիք . ըԿոյ-
կոյրերը կը տեսնեն . կաղերը կը
քալեն , բորոտները կը մաքրուին ,
խուլերը կը լսեն , մեռելները յա-
րութիւն կ'առնեն , թԱղքատնե-
րուն աւետարան կը քարոզուի .
23 Եւ երանի անոր , որ իմ վրայովս
չգայթակղի ։
24 ժՈւ երբոր Յովհաննէսին խրկած
մարդիկը գացին , Յիսուս սկսաւ
ժողովուրդներուն ըսել Յովհաննէ-
սին համար . Ի՞նչ տեսնելու ելաք
անապատին մէջ . եղէ՞գ մը հովէն
25 շարժուած ։ Հապա ի՞նչ տեսնե-
լու ելաք . փափուկ հանդերձներ
հագած մա՞րդ մը . ահա անոնք որ
փառաւոր հագուստներու ու փափ-
կութեան մէջ են , թագաւորական
26 պալատներն են ։ Հապա ի՞նչ
տեսնելու ելաք . մարգարէ՞ . այո՛
կ'ըսեմ ձեզի , մարգարէէ մըն ալ
27 աւելի ։ Ինչու որ ասիկայ է՝ որուն
համար գրուած է . իԱհա ես իմ
դեսպանս կը խրկեմ քու երեսիդ
առջևէն , որ քու ճամբադ պիտի
28 պատրաստէ քու առջևդ ։ Քան-
զի կ'ըսեմ ձեզի . կնիկներէն ծնած-
ներուն մէջը Յովհաննէս մկրտիչէն
մեծ մարգարէ չկայ . սակայն Աս-

բ Գլ. Ը. 54. Յոհ. ԺԱ. 43. Գործ. Թ. 40. Հռովմ. Դ. 17.
գ Գլ. Ա. 65.
դ Գլ. ԻԴ. 19. Յոհ. Դ. 19. Զ. 14. Թ. 17.
ե Գլ. Ա. 68.
զ Մատ. ԺԱ. 2.
է Մատ. ԺԱ. 5.
ը Ես. ԼԵ. 5.
թ Գլ. Դ. 18.
ժ Մատ. ԺԱ. 7.
ի Մաղ. Գ. 1.

տուծոյ թագաւորութեանը մէջ
պզտիկը անկէ մեծ է ։
29 Եւ բոլոր ժողովուրդը ու մաք-
սաւորները երբոր լսեցին , արդա-
րացուցին զԱստուած , որ ժաՅով-
հաննէսին մկրտութիւնովը մկր-
30 տուեցան ։ Բայց փարիսեցիները
և օրինականները ժբիրենց անձին
դէմ Աստուծոյ խորհուրդը անար-
գեցին , որ անկէ չմկրտուեցան ։
31 ժգՈւստի որո՞ւ նմանցընեմ աս
ազգին մարդիկը . և որո՞ւ կը նմա-
32 նին ։ Կը նմանին տղոց , որ շու-
կաները նստելով՝ իրարու կը կան-
չեն , ու կ'ըսեն . Փող հնչեցուցինք
ձեզի՝ ու չխաղացիք , ողբ կարդա-
33 ցինք ձեզի՝ ու չլացիք ։ ժդՎասն զի
Յովհաննէս մկրտիչը եկաւ , ոչ
հաց կ'ուտէր և ոչ գինի կը խմէր ,
ու կ'ըսէք . Դև կայ անոր ներսի
34 դին ։ Որդին մարդոյ եկաւ՝ կ'ուտէ
ու կը խմէ , և կ'ըսէք . Ահա ու-
տող և արբեցող մարդ մը՝ մաքսա-
ւորներու ու մեղաւորներու բարե-
35 կամ . ժեԵւ իմաստութիւնը արդա-
րացաւ իր բոլոր տղոցմէն ։
36 ժզՓարիսեցիներէն մէկը կ'աղաչէր
անոր՝ որ իր հետը հաց ուտէ . ան
ալ փարիսեցիին տունը մտաւ՝ ու
37 սեղան նստաւ ։ Եւ ահա քաղաքին
մէջ մեղաւոր կնիկ մը կար . երբոր
իմացաւ թէ անիկայ փարիսեցիին
տունը սեղան նստեր է , մէկ շիշ
38 մը անուշահոտ եղ բերաւ . Ու ե-
տևի կողմէն անոր ոտքերուն քովը
կեցեր՝ կու լար , և արցունքովը
սկսաւ անոր ոտքերը թրջել , ու
իր գլխուն մազերովը կը սրբէր , և
կը համբուրէր անոր ոտքերը , ու
39 եղով կ'օծէր ։ Ու երբոր տեսաւ
փարիսեցին՝ որ զանիկայ հրաւիրեր
էր , կ'ըսէր իր մտքին մէջ . ժէԱսի-
կայ թէ որ մարգարէ ըլլար , պիտի
գիտնար թէ ով՝ և ինչպէս կնիկ է
իրեն դպչողը . ինչու որ մեղաւոր
40 է ։ Եւ Յիսուս պատասխան տուաւ
ու ըսաւ անոր . Սիմոն՝ քեզի բան
մը ունիմ ըսելու . ան ալ ըսաւ .
41 Ըսէ՝ վարդապետ . Եւ ըսաւ . Մէկ
փոխ տուող մը երկու պարտական
ունէր . մէկը հինգ հարիւր դա-
հեկան պարտք ունէր , ու մէկալը՝
42 յիսուն ։ Եւ որովհետև հատու-
ցանելու կարողութիւն չունէին , եր-
կուքին ալ շնորհեց . հիմա ըսէ
ցէ , անոնցմէ ո՞րը աւելի պիտի սի-
43 րէ զանիկայ ։ Պատասխան տուաւ
Սիմոն՝ ու ըսաւ . Ինծի այնպէս
կ'երևնայ , թէ որուն որ շատ շնոր-
հեց . ան ալ ըսաւ անոր . Ուղիղ
44 դատեցիր ։ Ու դառնալով դէպ'ի
ան կնիկը՝ ըսաւ Սիմոնին . Կը
տեսնե՞ս աս կնիկը . ես քու տու-

Յամ Տեառն 31

ժա Մատ. Գ. 5. Գլ. Գ. 12.
ժբ Գործ. Ի. 27.
ժգ Մատ. ԺԱ. 16.
ժդ Մատ. Գ. 4. Մար. Ա. 6. Գլ. Ա. 15.
ժե Մատ. ԺԱ. 19.
ժզ Մատ. ԻԶ. 6. Մար. ԺԴ. 3. Յոհ. ԺԱ. 2.
ժէ Գլ. ԺԵ. 2.

Յամփ Տեառն 31

Նըդ մտայ, դուն ոտքերուս ջուր
չտուիր. բայց ասիկայ իր արցունքովը ոտքերս թրջեց, և իր ամազերովը սրբեց։ Դուն ինծի համ-
45 բոյր մը չտուիր. բայց ասիկայ հոս մտնելէս ՚ի վեր ոտքերս համ-
46 բուրելէն չդադարեցաւ։ Դուն իմ գլուխս ձէթով չօծեցիր. բայց ասիկայ իմ ոտքերս անու-
47 շահոտ եղով օծեց։ Ասոր համար կ՚ըսեմ քեզի. Ներուած են ասոր շատ մեղքերը, ինչու որ շատ սիրեց. բայց որու որ քիչ կը նե-
48 րուի, անիկայ քիչ կը սիրէ։ Ու ըսաւ անոր. Քու մեղքերդ նե-
49 րուած են։ Եւ անոր հետ սեղան նստողները սկսան իրենց մէջը ըսել. Ո՞վ է ասիկայ՝ որ մեղաց
50 թողութիւն ալ կու տայ։ Եւ ինքը ըսաւ կնկանը. Քու հաւատքդ քեզ փրկեց, գնա խաղաղութեամբ։

ա Յովհ. գըլխուն մազերովը
բ Սաղ. իգ. 5։
գ Մտթ. ա. 14։
դ Մատ. թ. 2։ Մար. բ. 5։
ե Մատ. թ. 3։ Մար. բ. 7։
զ Մատ. թ. 22։ Մար. ե. 34։ ժ. 52։ Ղկ. ը. 48։ ժը. 42։
† Կամ փրկեց

## ԳԼ. Ը

1 Կանայք իրենց ստացուածքովը ծառայութիւն կ՚ընեն Քրիստոսի։ 4 Քրիստոս կը զրուցէ սերմանացանին, 16 և ճրագին առակը. 21 կ՚իմացընէ թէ ով են իր մայրը ու եղբայրները. 22 կը սաստէ հովերուն. 26 և մէկ մարդէ մը դեւաց լէգէոնը դուրս հանելով՝ թող կու տայ անոնց որ խոզերուն երամակը մտնեն։ 37 Գերգեսացիք չեն ընդունիր զինքը։ 43 Երկոտասան տարի արիւնահոսութիւն ունեցող կինը կը բժշկէ, 49 և Յայրոսի աղջիկը կը յարուցանէ։

1 Ու եղաւ որ անկէ ետեւ ալ ինքը քաղաքէ քաղաք ու գեղէ գեղ պտըտելով՝ կը քարոզէր, և Աստուծոյ թագաւորութիւնը կ՚աւետարանէր. ու տասուերկուքը իր
2 հետն էր. Նաև քանի մը կնիկներ՝ որ չար ոգիներէ ու հիւանդութիւններէ բժշկուեր էին. Մարիամ՝ որ Մագդաղենացի կ՚ըսուէր, Որուն մէջէն եօթը դեւ ելեր էր,
3 Եւ Յովհաննա՝ Հերովդէսին տանը վերակացուին Քուզային կնիկը, ու Շուշան, և շատ ուրիշներ, որոնք իրենց ստացուածքովը անոր ծառայութիւն կ՚ընէին։
4 Ու երբոր մեծ բազմութիւն ժողվուեցաւ, և շատ քաղաքներէ իրեն եկան, առակով մը ըսաւ ա-
5 նոնց. Սերմ ցանող մը ելաւ իր սերմը ցանելու. ու ցանած ատենը՝ մէկ քանին ճամբուն քովը ինկաւ, և ոտքի տակ կոխուեցաւ, ու երկինքի թռչունները կերան զանիկայ։
6 Եւ ուրիշը ապառաժի վրայ ինկաւ, ու բուսածին պէս չորցաւ հողը
7 հիւթ չունենալուն համար։ Եւ ուրիշը փուշերու մէջ ինկաւ, ու փուշերը անոր հետը բուսնելով՝
8 խեղդեցին անիկայ։ Եւ ուրիշը աղէկ հողի մէջ ինկաւ, ու բուսնելով՝ հարիւրապատիկ պտուղ

ա Մատ. իէ. 55. 56։
բ Մար. ժզ. 9։
գ Որոնք՝ անոնց
դ Մատ. ժգ. 2։ Մար. դ. 1։

տուաւ. երբոր աս բաները կը զրուցէր, կ՚աղաղակէր. Ան որ լսելու ականջ ունի, թող լսէ։
9 Եւ իր աշակերտները կը հարցընէին իրեն՝ ըսելով թէ, Ի՞նչ պի-
10 տի ըլլայ ան առակը։ Ան ալ ըսաւ. Ձեզի տրուած է գիտնալ Աստուծոյ թագաւորութեանը խորհուրդները, բայց ուրիշներուն առակներով կը խօսիմ. Որ տեսնելով՝ չտեսնեն, և լսելով՝ չիմանան։
11 Դարձ՝ առակը աս է. Սերմը Աս-
12 տուծոյ խօսքն է։ Ու ճամբուն քովինները անոնք են՝ որ կը լսեն, ու ետքը Սատանան կու գայ՝ անոնց սրտէն կը հանէ խօսքը, որ չըլլայ
13 թէ հաւատան՝ ու փրկուին։ Եւ ապառաժին վրայինները անոնք են՝ որ երբ կը լսեն, ուրախութեամբ կ՚ընդունին խօսքը, բայց արմատ չունին. ատեն մը կը հաւատան՝ ու փորձութեան ժամանակը կը
14 հեռանան։ Եւ փուշերուն մէջ ինկածը անոնք են՝ որ կը լսեն, բայց հոգերով ու հարստութիւնով և աս կեանքիս ցանկութիւններովը զբաղած ըլլալով՝ կը խեղ-
15 դուին, և անպտուղ կ՚ըլլան։ Իսկ աղէկ հողի մէջ ցանուածը անոնք են՝ որ բարի և յօժար սրտիւ լսելով խօսքը՝ կ՚ընդունին, ու համբերութիւնով պտուղ կու տան։
16 Չկայ մէկը որ ճրագը վառէ՝ ու ամանի մը տակ կամ մահիճին ներքեւը դնէ. հապա աշտանակի վրայ կը դնէ, որ ներս մտնողները
17 լոյսը տեսնեն։ Վասն զի չկայ ծածուկ բան մը որ պիտի չյայտնուի, ոչ ալ գաղտուկ բան մը որ պիտի չգիտցուի՝ ու երեւան չելլէ։
18 Ուստի նայեցէք՝ թէ ինչպէս կը լսէք. Վասնզի ով որ ունի՝ անոր պիտի տրուի, և ով որ չունի՝ ան ալ որ ինքը կը կարծէ թէ ունի, անկէ պիտի առնուի։
19 Եւ անոր մայրը ու եղբայրները իրեն եկան, ու բազմութենէն չէին
20 կրնար անոր քովը երթալ։ Եւ անոր իմացուցին՝ ըսելով. Քու մայրդ ու եղբայրներդ դուրսը կայներ են, ու քեզ տեսնել կ՚ուզեն։
21 Եւ անիկայ պատասխան տալով՝ ըսաւ անոնց. Իմ մայրս ու իմ եղբայրներս ասոնք են, որ Աստուծոյ խօսքը կը լսեն ու զանիկայ կը կատարեն։
22 Ու եղաւ որ մէկ օր մը նաւը մտաւ ինքը և իր աշակերտներն ալ, ու ըսաւ անոնց. Ծովակին մէկալ կողմը անցնինք. և ճամբայ
23 ելան։ Ու երբոր նաւով կ՚երթային, ինքը քնացաւ, ու հովի փոթորիկ մը իջաւ ծովակին վրայ,

Յամփ Տեառն 31

ա Մատ. ժգ. 10։ Մար. դ. 10։
բ Եսա. զ. 9։ Մար. դ. 12։
գ Մատ. ժգ. 18։ Մար. դ. 14։
դ Մատ. ե. 15։ Մար. դ. 21։ Ղկ. ժա. 33։
ե Մատ. ժ. 26։ Ղկ. ժբ. 2։
զ Մատ. ժգ. 12։ իե. 29։ Ղկ. ժթ. 26։
է Մատ. ժբ. 46։ Մար. գ. 31։
ը Մատ. ը. 23։ Մար. դ. 35։

Ցամբ Տեառն 31

և նաւը կը լեցուէր , ու իրենք վը-
24 տանգի մէջ էին ։ Մօտեցան ար-
թընցուցին անիկայ՝ ու ըսին .
Վարդապետ վարդապետ՝ ահա կը
կորսուինք . ան ալ ելաւ սաստեց
հովին , ու ջուրերուն խռովու-
թեանը , և հանդարտեցան , ու
25 խաղաղութիւն եղաւ ։ Եւ ըսաւ
անոնց . Ո՞ւր է ձեր հաւատքը .
և անոնք վախի մէջ ինկած զարմա-
ցան , ու իրարու կ՚ըսէին . Արդեօք
ո՞վ է ասիկայ , որ հովերուն ու
ջուրերուն ալ հրաման կու տայ . և կը
հնազանդին ասոր ։
26 ւ Ու նաւելով իջան * Գադարա-
ցւոց երկիրը , որ Գալիլեային
27 դիմացի կողմն է ։ Եւ ինքը ցա-
մաքը ելլելուն պէս՝ ան քաղաքէն
մարդ մը ելաւ դիմացը՝ որուն ներսը
շատ ատենէ 'ի վեր դեւեր կային .
ու անիկայ հանդերձ չէր հագներ ,
ոչ ալ տան մէջ կը բնակէր ,
28 հապա գերեզմաններու մէջ ։ Եւ
Յիսուսը տեսնելով՝ աղաղակեց ,
ու ինկաւ անոր առջեւը , ու բարձր
ձայնով ըսաւ . Դուն իմ հետս
ի՞նչ բան ունիս Յիսուս՝ Որդի
Աստուծոյ բարձրելոյ , կ՚աղաչեմ
29 քեզի՝ զիս մի տանջեր . (ինչու որ
հրամայեց պիղծ ոգիին՝ որ ան մար-
դէն ելլէ . որովհետեւ շատ ատեն
էր՝ որ զանիկայ յափշտակեր էր . և
անիկայ շղթաներով , ու ոտնա-
կապերով կապուած կը պահուէր ,
բայց կապերը կը կոտրտէր , ու
դեւէն անապատը կը քշուէր . )
30 Հարցուց անոր Յիսուս՝ ու ըսաւ .
Անունդ ի՞նչ է . ան ալ ըսաւ . Լէ-
գէոն . ինչու որ շատ դեւեր մտեր
31 էին անոր ներսի դին ։ Եւ կ՚աղա-
չէին անոր՝ ւ որ անդունդը երթա-
32 լու հրաման չընէ իրենց ։ Եւ ան
տեղը շատ խոզերու երամակ մը
կար՝ որ լեռը կ՚արածուէին . ու ա-
ղաչեցին անոր՝ որ իրենց հրաման
տայ անոնց մէջը մտնելու . և հրա-
33 ման տուաւ անոնց ։ Ու դեւերը
մարդէն ելլելով՝ խոզերուն մէջը
մտան . և երամակը զառիվեժ տե-
ղէն ծովակը վազեց , ու խեղդուե-
34 ցաւ ։ Եւ խոզարածները որ ե-
ղած բանը տեսնելով՝ փախան , ու
պատմեցին քաղաքը ու ագարակ-
35 ները ։ Եւ մարդիկ ելան եղած բա-
նը տեսնելու , ու եկան Յիսուսին ,
և գտան ան մարդը՝ ուսկից որ դեւե-
րը ելեր էին , հագուած ու խելքը
վրան Յիսուսի ոտքերուն քովը
36 նստած , ու վախցան ։ Եւ անոնք
որ տեսեր էին , պատմեցին անոնց՝
թէ ինչպէս դիւահարը ազատե-
37 ցաւ ։ ծ Եւ Գադարացւոց շրջակայ
տեղուանքը գտնուող բոլոր բազ-
մութիւնը կ՚աղաչէր անոր , որ
իրենցմէ երթայ . ինչու որ մեծ
վախով բռնուած էին . ան ալ
38 նաւը մտնելով՝ ետ դարձաւ ։ ՚ Եւ
ան մարդը՝ ուսկից որ դեւերը ելեր
էին , կ՚աղաչէր անոր՝ որ հետը
ըլլայ . բայց Յիսուս արձակեց ա-
39 նիկայ՝ ու ըսաւ . Դարձիր քու
տունդ , ու պատմէ՝ ինչ որ Աս-
տուած քեզի ըրաւ . ան ալ գնաց ,
ու բոլոր քաղաքին մէջը քարոզեց ,
ինչ որ Յիսուս իրեն ըրաւ ։
40 Ու երբոր Յիսուս ետ դարձաւ ,
ժողովուրդը զանիկայ ընդունեց .
ինչու որ ամէնքը անոր կը սպասէ-
41 ին ։ յ Եւ ահա Յայրոս անունով
մարդ մը եկաւ , ու ինքը ժողովա-
րանին իշխանն էր . և Յիսուսին
ոտքը իյնալով՝ կ՚աղաչէր անոր ,
42 որ իր տունը մտնէ . ինչու որ մէկ
հատիկ աղջիկ մը ունէր՝ գրեթէ
տասուերկու տարեկան , որ մեռ-
նելու մօտ էր . ու երբոր անիկայ
կ՚երթար , բազմութիւնը կը նեղէր
զանիկայ ։
43 ղ Եւ կնիկ մը՝ որ տասուերկու
տարիէ 'ի վեր արիւնի տեռատե-
սութեան մէջ էր , ու իր բոլոր
ունեցածը բժիշկներուն ծախք ըրած
էր , և իրեն մէկէ մը բժշկուելու ճար
44 մը եղած չէր , Ետեւէն մօտենալով՝
անոր հանդերձին քղանցքին դը-
պաւ , և իսկոյն իր արիւնին հոսու-
45 մը դադարեցաւ ։ Եւ Յիսուս ը-
սաւ . Ո՞վ էր ան որ ինծի դպաւ .
երբոր ամէնքը կ՚ուրանային , ըսաւ
Պետրոս ու անոր հետ եղողները .
Վարդապետ՝ բազմութիւնք քեզ
կը հրեն ու կը նեղեն , ու կ՚ըսե՞ս թէ՝
46 Ո՞վ ինծի դպաւ ։ Եւ Յիսուս ը-
սաւ . Մէկը ինծի դպաւ , քանզի
ճ իմացայ որ ինծմէ զօրութիւն մը
47 ելաւ ։ Երբոր տեսաւ կնիկը՝ որ
բանը անկէ չպահուեցաւ , դողալով
եկաւ՝ ու անոր առջեւը ինկաւ , և
բոլոր ժողովուրդին առջեւը անոր
պատմեց՝ թէ ինչ բանի համար ա-
նոր դպչեր էր , և թէ ինչպէս ին-
48 քը իսկոյն բժշկուեցաւ ։ Եւ Յի-
սուս ըսաւ անոր . Քաջալերուէ՝
աղջիկ , քու հաւատքդ քեզ բժըշ-
կեց , գնա խաղաղութեամբ ։
49 մ Երբոր ինքը դեռ կը խօսէր ,
ժողովրդապետին տունէն մէկը ե-
կաւ՝ ու ըսաւ անոր . Աղջիկդ մե-
ռաւ , ու վարդապետը մի՛ յոգ-
50 նեցըներ ։ Բայց Յիսուս երբոր լը-
սեց , պատասխան տուաւ անոր՝ ու
ըսաւ . Մի՛ վախնար , միայն հա-
51 ւատա , ու պիտի ապրի ։ Եւ երբ
տունը մտաւ՝ ուրիշ մէկը թող
չտուաւ որ մտնէ , բայց միայն
Պետրոսը ու Յակոբոսը և Յովհան-

ւ Մատ. ը. 28. Մար. ե. 1
* Ոմանք՝ Գերգեսացւոց
ւ Յայտ. ի. 3.
ծ Մատ. ը. 34.

Ցամբ Տեառն 31

ւ Գործ. ժզ. 39. ՚ Մար. ե. 18.
յ Մատ. թ. 18. Մար. ե. 22.
ղ Մատ. թ. 20.
ճ Մար. ե. 30. Ղւ. զ. 19.
մ Մար. ե. 35.

Ցամք Ցնաուն 31

ⁱ Յով. ժա. 11. 13.
ⁿ Ղկ. է. 14. Յով. ժա. 43.
ᵘ Մատ. ը. 4. Թ. 30. Մար. ե. 43.

նէսը, ու աղջկան հայրը ու մայրը։
52 Ամէնքն ալ կու լային ու կ'ողբա-
յին անոր վրայ. և ինքը ըսաւ.
Մի՛ լաք. անիկայ մեռած չէ, ⁱ հա-
53 պա կը քնանայ։ Եւ անոնք ծաղր
կ'ընէին զանիկայ, քանզի գիտէին
54 թէ մեռաւ։ Ու ինքը ամէնն ալ
դուրս հանելով, բռնեց անոր ձեռ-
քէն, ու կանչեց ըսելով. Աղջի՛կ
55 ⁿ ելի՛ր։ Եւ անոր հոգին դարձաւ,
ու իսկոյն ոտք ելաւ. և Ցիսուս
հրաման ըրաւ որ ուտելիք տան ա-
56 նոր։ Ու անոր ծնողքը ապշած
մնացին. ᵘ և ինքը անոնց պատուի-
րեց՝ որ եղած բանը մէկու մը չը-
րուցեն։

## ԳԼ. Թ

1 Քրիստոս իր աշակերտները կը խրկէ հրաշքներ ընելու և քարոզելու։ 7 Հերովդէս կը ջանայ Քրիստոսը տեսնելու։ 17 Քրիստոս հինգ հազար հոգի կը կերակրէ. 18 կը հարցընէ թէ մարդիկ իրեն համար ո՞վ է կ'ըսեն. 22 իր չարչարանքները կը նախաձայնէ. 23 ամենուն պատուէր կու տայ որ իր օրինակին հետևին. 28 Քրիստոսի այլակերպութիւնը։ 37 Քրիստոս կը բժշկէ լուսնոտը. 43 դարձեալ իր չարչարանքը կը նախաձայնէ իր աշակերտներուն. 46 կը պատուիրէ անոնց որ խոնարհ ըլլան. 51 ամենուն հետ քաղցրութեամբ վարուին՝ առանց վրէժխնդրութեան։ 57 քանի մը անձինք կ'ուզեն Քրիստոսի հետևիլ, սակայն պայմաններ կ'առաջարկեն։

ᵃ Մատ. ժ. 1. Մար. գ. 13. զ. 7.
ᵇ Մատ. ժ. 7, 8. Մար. զ. 12. Ղկ. ժ. 1, 9.
ᶜ Մատ. ժ. 9. Մար. զ. 8. Ղկ. ժ. 4. իբ. 35.
ᵈ Մատ. ժ. 11. Մար. զ. 10.
ᵉ Մատ. ժ. 14.
ᶠ Գոր. ժգ. 51.
ᵍ Մար. զ. 12.

1 Եւ իր ᵃ տասուերկու առաքեալ-
ները մէկտեղ իրեն կանչելով,
անոնց զօրութիւն ու իշխանու-
թիւն տուաւ բոլոր դևերուն վրայ,
2 և ախտերը բժշկելու։ Եւ ᵇ զանոնք
խրկեց որ Աստուծոյ թագաւորու-
թիւնը քարոզեն, ու հիւանդները
3 բժշկեն։ Եւ ᶜ ըսաւ անոնց. Ճամ-
բու համար բան չառնէք, ո՛չ գա-
ւազան՝ և ոչ տոպրակ, ո՛չ հաց՝
և ոչ ստակ, ո՛չ ալ կրկին հան-
4 դերձ ունենաք։ Եւ ᵈ որ տուն որ
մտնէք հոն մնացէք, ու անկէ
5 ելէք։ Ու ᵉ անոնք որ ձեզ չեն ըն-
դունիր, երբոր ան քաղաքէն կ'ել-
լէք, ᶠ ձեր ոտքերուն փոշին ան-
դամ թօթվեցէք՝ իրենց դէմ վը-
6 կայութիւն ըլլալու համար։ Եւ
անոնք ᵍ ելան՝ ու գեղէ գեղ կը պը-
տըտէին, և ամէն տեղ աւետարա-
նը կը քարոզէին, ու բժշկութիւն
կ'ընէին։

Յա. Տ 32
ʰ Մատ. ժդ. 1. Մար. զ. 14.

7 Եւ ʰ Հերովդէս չորրորդապետը
անոր բոլոր գործքերը լսելով՝ տա-
րակուսանաց մէջ էր. որովհետև
ոմանք ըսած էին թէ, Յովհաննէ-
սը յարութիւն առաւ մեռելներէն.
8 Եւ ոմանք թէ՝ Եղիան յայտնուե-
ցաւ. և ուրիշներն ալ թէ՝ Առջի
մարգարէներէն մէկը յարութիւն
9 առաւ։ Եւ Հերովդէս ըսաւ.
Յովհաննէսը ես գլխատեցի. հա-
պա ասիկայ ո՞վ պիտի ըլլայ, որուն
վրայօք այսանկ բաներ կը լսեմ.
ⁱ Ու կ'ուզէր որ տեսնէ զանիկայ։
10 Եւ ʲ առաքեալները դարձան, ու
պատմեցին անոր՝ ինչ որ ըրին. ᵏ և
առաւ զանոնք՝ առանձին անապատ
տեղ մը քաշուեցաւ քաղաքի մը
քով, որուն անունը Բեթսայիդա
11 էր։ Եւ ժողովուրդները երբոր
իմացան, անոր ետևէն գացին, ու
զանոնք ընդունելով՝ կը խօսէր ա-
նոնց Աստուծոյ թագաւորութեա-
նը վրայօք. և որոնք որ բժշկու-
թեան կարօտ էին, կը բժշկէր։
12 ˡ Ու երբոր օրը սկսաւ իրիկուան
մօտենալ, տասուերկուքը եկան ու
ըսին անոր. Արձակէ ժողովուրդ-
ները, որ շրջակայ գեղերը ու ա-
գարակները երթան իջևանին, ու
կերակուր գտնեն. ինչու որ հոս
13 անապատ տեղ մըն ենք։ Ըսաւ
անոնց. Դո՛ւք տուէք ատոնց ու-
տելիք. անոնք ալ ըսին. Մենք
հինգ նկանակէն ու երկու ձուկէն
աւելի բան չունինք, թէ որ չեր-
թանք աս բոլոր ժողովուրդին հա-
14 մար կերակուր չգնենք։ (Քանզի
հինգ հազարի չափ էրիկ մարդիկ
կային։) Ու ըսաւ իր աշակերտ-
ներուն. Ատոնք դաս դաս՝ յիսուն
15 յիսուն նստեցուցէք։ Եւ անանկ
ըրին, ու ամէնն ալ նստեցուցին։
16 Եւ ան հինգ նկանակը ու երկու
ձուկը առնելով՝ ու դէպ 'ի երկին-
քը նայելով, օրհնեց զանոնք ու
կտրեց, և կու տար աշակերտնե-
րուն, որ ժողովուրդին առջևը
17 դնեն։ Եւ կերան ու կշտացան
ամէնքն ալ, ու աւելցած կտո-
րուանքները տասուերկու կողով
վերցուցին։
18 ᵐ Ու եղաւ որ երբ ինքը առան-
ձին աղօթք կ'ընէր, աշակերտներն
ալ իր հետն էին, և հարցուց ա-
նոնց ըսելով. Ժողովուրդները ին-
19 ծի համար ո՞վ կ'ըսեն թէ եմ։ Ա-
նոնք ալ պատասխան տալով՝ ըսին.
Որ ⁿ Յովհաննէս մկրտիչը, և
ուրիշները՝ Եղիան, ուրիշներն ալ
թէ՝ Առջի մարգարէներէն մէկը յա-
20 րութիւն առեր է։ Եւ ինքը ըսաւ
անոնց. Հապա դուք ինծի համար
ո՞վ կ'ըսէք՝ թէ եմ. ° պատասխան
տուաւ Պետրոս՝ ու ըսաւ. Աս-
21 տուծոյ Քրիստոսը։ Եւ ᵖ ինքը
սաստիկ պատուիրեց անոնց՝ որ աս
22 բանը մէկու մը չըրուցեն. Ու ը-
սաւ թէ, ᵍ Պէտք է որ Որդին մար-
դոյ շատ չարչարանքներ կրէ, և
ծերերէն ու քահանայապետներէն
և դպիրներէն մերժուի, ու սպան-
նուի ու երրորդ օրը յարութիւն
23 առնէ։ ʳ Եւ ամենուն կ'ըսէր. Թէ
որ մէկը կ'ուզէ իմ ետևէս գալ,

Ցամք Ցնաուն 32

ⁱ Ղկ. իգ. 8.
ʲ Մար. զ. 30.
ᵏ Մատ. ժդ. 13.
ˡ Մատ. ժդ. 15. Մար. զ. 35. Յով. զ. 1, 5.
ᵐ Մատ. ժզ. 13. Մար. ը. 27.
ⁿ Մատ. ժդ. 2. Հմր 7, 8.
° Մատ. ժզ. 16. Յով. զ. 70.
ᵖ Մատ. ժզ. 20.
ᵍ Մատ. ժզ. 21. ժէ. 21.
ʳ Մատ. ժ. 38. ժզ. 24. Մար. ը. 34. Ղկ. ժդ. 27.

Յամի Տեառն
32

թող իր անձը ուրանայ , և ամէն
օր իր խաչը վերցընէ , ու իմ ետե_
24 ւէս գայ ։ Վասն զի ով որ կ՚ուզէ
իր անձը ապրեցընել , պիտի կոր_
սնցընէ անիկայ . և ով որ ինծի
համար իր անձը կորսնցընէ , պի_
ⁱ Մատ . ժզ . 26 ։ Մար . ը . 36 ։
25 տի ապրեցընէ անիկայ ։ ⁱ Քանզի
ի՞նչ կը շահի մարդ մը՝ թէ որ
բոլոր աշխարհը վաստըկի , և իր
անձը կորսնցընէ կամ վնասէ ։
ʲ Մատ . ժ . 33 ։ Մար . ը . 38 ։ բ Տիմ . բ . 12 ։
26 ʲ Վասն զի ով որ զիս ու իմ խօս_
քերս [illegible] ամօթ սեպէ , Որ_
դին մարդոյ ալ զանիկայ [illegible]
ամօթ պիտի սեպէ՝ երբոր գայ իր
ու Հօրը և սուրբ հրեշտակներուն
ᵏ Մատ . ժզ . 28 ։ Մար . ը . 39 ։
27 փառքովը ։ ᵏ Բայց ճշմարիտ կ՚ը_
սեմ ձեզի , որ հոս կայնողներէն
մէկ քանիները կան՝ որոնք մահուան
համը պիտի չառնեն , մինչև որ
տեսնեն Աստուծոյ թագաւորու_
թիւնը ։
ˡ Մատ . ժէ . 1 ։ Մար . թ . 1 ։
28 ˡ Ու եղաւ որ աս խօսքերէն
գրեթէ ութ օր ետքը՝ Պետրոսը ու
Յովհաննէսը և Յակոբոսը առնելով՝
29 լեռը ելաւ աղօթք ընելու ։ Ու
երբոր ինքը աղօթք կ՚ընէր , իր
երեսին տեսքը ուրիշ կերպ մը ե_
ղաւ , ու իր հագուստը ճերմակ [illegible]
30 փայլուն եղաւ ։ Եւ ահա երկու
մարդիկ իր հետը կը խօսէին , ո_
31 րոնք Մովսէս ու Եղիա էին , Փառ_
քով երևցած , և անոր [illegible]
ելլելուն վրայով կը խօսէին , որ
Երուսաղէմի մէջ պիտի կատա_
ᵐ Դան . ը . 18 ։ ժ . 9 ։
32 րուէր ։ Բայց Պետրոս և անոր
հետ եղողները ՚նքունով ծանրացած
էին , ու երբոր արթընցան , տե_
սան անոր փառքը , և ան երկու
մարդիկը՝ որ անոր քովը կեցեր էին ։
33 Ու եղաւ որ երբ անոնք զատուե_
ցան անոր քովէն , Պետրոս ըսաւ
Յիսուսին . Վարդապետ՝ աղէկ է որ
հոս կենանք . ու իրեք խրճիթ շի_
նենք , մէկը քեզի , և մէկը Մով_
սէսին , ու մէկը Եղիային . վասն
զի չէր գիտեր ինչ կը խօսէր ։
34 Եւ քանի որ անիկայ աս բաները
կը խօսէր , ամպ մը եկաւ՝ ու անոնց
վրայ հովանի եղաւ , և ամպին տա_
35 կը մտած ատեննին վախցան ։ Ու
ձայն մը եղաւ ամպէն՝ ըսելով .
ⁿ Մատ . գ . 17 ։ ² Պետ . ա . 17 ։
ⁿ Ասիկայ է իմ սիրելի Որդիս , Նա_
36 տոր մտիկ ըրէք ։ Եւ ան ձայնը
ᵒ Մատ . ժէ . 9 ։
որ եղաւ , Յիսուս մինակ գտնուե_
ցաւ ։ ᵒ Ու իրենք լուռ կեցան , և
իրենց տեսածներէն՝ ան օրերը մէ_
կուն բան մը չպատմեցին ։
ᵖ Մատ . ժէ . 14 ։ Մար . թ . 13 ։ 16 ։
37 ᵖ Ու եղաւ որ հետևեալ օրը՝ երբ_
որ անոնք լեռնէն վար իջան , շատ
38 ժողովուրդ անոր դէմը ելաւ ։ Եւ
ահա ժողովուրդին մէջէն մէկ մարդ
մը աղաղակեց ու ըսաւ . Վարդա_
պետ՝ կ՚աղաչեմ քեզի՝ նայէ իմ

որդւոյս , քանզի իմ մէկ հատիկս
39 է . Եւ ահա ոգի մը կը բռնէ զա_
նիկայ . [illegible]ն ալ յանկարծ կը կան_
չուըռտէ , և զանիկայ ցնցելով կը
փրփրցընէ , ու հազիւ կը զատուի
անկէ՝ ջարդուբուրդ ընելով զանի_
40 կայ . Եւ քու աշակերտներուդ ա_
ղաչեցի՝ որ հանեն զանիկայ , ու
41 չկրցան ։ Պատասխան տուաւ Յի_
սուս՝ ու ըսաւ . Ո՛վ անհաւատ և
խոտորեալ ազգ՝ մինչև ե՞րբ ձեզի
հետ պիտի ըլլամ՝ ու ձեզի համբե_
42 րեմ . հո՛ս բեր քու որդիդ ։ Ու
երբոր դեռ կը մօտենար , դեւը զա_
նիկայ գետինը զարկաւ՝ ու սաստիկ
43 ցնցեց ։ Իսկ Յիսուս սաստեց
պիղծ ոգիին , և բժշկեց տղան՝ ու
44 զանիկայ իր հօրը տուաւ ։ Եւ
ամէնքը կը զարմանային Աստուծոյ
մեծամեծ գործքերուն վրայ ։
Ու քանի որ ամէնքը կը զարմա_
նային Յիսուսին ըրած բոլոր գործ_
քերուն վրայ , անիկայ ըսաւ իր ա_
շակերտներուն . ᵠ Դուք աս խօս_ ᵠ Մատ . ժէ . 21 ։
քերը ականջներնիդ դրէք , վասն
զի Որդին մարդոյ պիտի մատնուի
45 մարդոց ձեռքը ։ ʳ Բայց անոնք ʳ Մար . թ . 31 ։ Ղուկ . բ . 50 ։ ժը . 34 ։
չէին իմանար ան խօսքը , և ա_
նոնցմէ ծածկուած էր՝ որ չհասկը_
նան . ու կը վախնային ան խօսքին
համար իրեն հարցընելու ։
46 ˢ Խորհուրդ մըն ալ մտաւ անոնց ˢ Մատ . ժը . 1 ։ Մար . թ . 33 ։
մէջ՝ թէ արդեօք իրենց մէջը ո՞վ է
47 մեծ ։ Իսկ Յիսուս անոնց սրտին
խորհուրդը իմանալով , տղայ մը
առաւ՝ ու զանիկայ իր քովը կայ_
48 նեցուց , Եւ ըսաւ անոնց . ᵗ Ո՛վ ᵗ Մատ . ժ . 40 ։ ժը . 5 ։ Մար . թ . 36 ։ Յով . ժգ . 44 ։ ժգ . 20 ։
որ աս տղան իմ անունովս կ՚ըն_
դունի՝ զիս կ՚ընդունի . և ան որ
զիս կ՚ընդունի՝ անիկայ զիս ղրկողը
կ՚ընդունի . վասն զի ան որ ձեր
ամենուն մէջը պզտիկ է , անիկայ ᵘ Մատ . իգ . 11 ։ 12 ։
մեծ պիտի ըլլայ ։
49 ᵛ Պատասխան տուաւ Յովհան_ ᵛ Մար . թ . 37 ։ Տես Թուոց ժա . 28 ։
նէս ու ըսաւ . Վարդապետ՝ մէկը
տեսանք որ քու անունովդ դեւեր կը
հանէր , և զանիկայ արգիլեցինք ,
50 ինչու որ մեր հետը չպտըտիր ։ Եւ
Յիսուս ըսաւ անոր . Մի՛ արգիլէք .
ʷ քանզի ան որ * ձեզի հակառակ ʷ Մատ . ժբ . 30 ։ Ղուկ . ժա . 23 ։
չէ , ձեր" կողմն է ։ * Ոմանք՝ մե_զի հակառակ չէ , մեր
51 Ու եղաւ որ երբ ‡ իր [illegible]
վերնալու օրերը կը կատարուէր ,
ինքն ալ †հաստատ որոշեց" Ե_ ‡ Մար . ժզ . 19 ։ Գործ . ա . 2 ։
52 րուսաղէմ երթալ ։ Եւ իր երեսին
առջևէն պատգամաւորներ խրկեց ,
որ երբոր գացին՝ Սամարացւոց մէկ † Յուն . երեսը հաստատեց
գեղը մտան որ իրեն համար պատ_
53 րաստութիւն մը ընեն ։ ⁺ Եւ չըն_ ⁺ Յով . դ . 4 ։ 9 ։
դունեցին զանիկայ , ինչու որ անոր
երեսը դէպ ՚ի Երուսաղէմ երթա_
54 լու [illegible] էր ։ Երբոր իր ա_
շակերտները Յակոբոս ու Յովհան_

Յամի Տեառն
32

Յամի Տեառն 32

ա Դ Թագ. Ա. 10. 12.
* Ոմանք չունին.
§ Յովհ. Գ. 17. Ժբ. 47.
դ Մատ. Ը. 19.
ե Մատ. Ը. 21.
‡ Տես Գ Թագ. ԺԹ. 20.

նէս տեսան, ըսին. Տէ՛ր կ'ուզե՞ս
որ ըսենք, ու երկինքէն կրակ իջնէ՛
և սատկեցընէ անոնք, ᵃինչպէս որ
55 Եղիան ալ ըրաւ։ Եւ դարձաւ
յանդիմանեց զանոնք՝ ըսելով.
Չէ՛ք գիտեր թէ ինչ հոգիի տէր
56 էք դուք. *Վասն զի §Որդին մար-
դոյ չեկաւ մարդոց հոգիները կոր-
սընցընելու, հապա փրկելու". և
ուրիշ գեղ մը գացին։
57 ᵈՈւ երբոր անոնք ճամբան կ'եր-
թային, մէկը ըսաւ անոր. Տէ՛ր
քու ետեւէդ գամ՝ ուր որ երթաս։
58 Եւ Յիսուս ըսաւ անոր. Աղուէս-
ները որջեր ունին, ու երկնից
թռչունները բոյներ, բայց Որդին
մարդոյ տեղ մը չունի, որ հոն իր
գլուխը դնէ։
59 ᵉՄէկ ուրիշի մըն ալ ըսաւ. Ե-
կուր իմ ետեւէս. ան ալ ըսաւ.
Տէ՛ր ինծի հրաման տուր, որ ա-
ռաջ երթամ իմ հայրս թաղեմ։
60 Յիսուս ըսաւ անոր. Թող տուր
մեռելներուն որ թաղեն իրենց մե-
ռելները. բայց դուն գնա՛ Աստու-
ծոյ թագաւորութիւնը քարոզէ։
61 Մէկ ուրիշ մըն ալ ըսաւ. Տէ՛ր
‡ես քու ետեւէդ պիտի գամ. բայց
ինծի հրաման տուր, որ առաջ իմ
տանս մէջ եղողներուն հրաժարա-
62 կան ողջոյն տամ։ Յիսուս ըսաւ
անոր. Ո՛չ մէկը՝ որ ձեռքը մաճին
վրայ կը դնէ ու ետին կը նայի, Աս-
տուծոյ թագաւորութեանը յար-
մար է։

ԳԼ. Ժ

1 Քրիստոս եօթանասուն աշակերտներ կը խրր-
կէ հրաշագործութիւն ընելու և քարոզելու.
17 կը պատուիրէ անոնց որ խոնարհ ըլլան, և
կ'իմացընէ թէ ինչ բանի համար պարտին
ուրախանալ. 21 շնորհակալ կ'ըլլայ Հօրը՝
անոր շնորհացը համար. 23 երանութիւն կու
տայ իր աշակերտներուն երջանիկ վիճակին.
25 կը սորվեցընէ օրինականին թէ ինչ ընելու
է որ յաւիտենական կեանքը ժառանգէ. և
թէ ո՛վ որ իր ողորմութեանը կարօտ է, ա-
նիկայ իրեն ընկեր սեպելու է. 41 կը յանդի-
մանէ Մարթան, ու անոր քոյրը Մարիամը
կը գովէ։

ա Մատ. Ժ. 1. Մար. Զ. 7.
բ Մատ. Թ. 37. 38. Յովհ. Դ. 35.
գ Բ Թես. Գ. 1.
դ Մատ. Ժ. 16.
ե Մատ. Ժ. 9. 10. Մար. Զ. 8. Ղուկ. Թ. 3.
զ Դ Թագ. Դ. 29.
է Մատ. Ժ. 12.
† Յովհ. խաղաղութիւն

1 Աս բաներէն ետև Տէրը ուրիշ եօ-
թանասուն ալ որոշեց. ᵃև
զանոնք իր առջեւէն երկու երկու
խրկեց բոլոր քաղաքները ու տեղե-
2 րը՝ ուր որ ինքը պիտի երթար։ Եւ
կ'ըսէր անոնց. ᵇՀունձքը շատ է,
ու մշակները քիչ. ᶜուստի հունձ-
քին Տէրոջը աղաչեցէք, որ մշակ-
3 ներ հանէ իր հունձքին։ Գացէք.
ᵈահա՛ ես ձեզ կը խրկեմ իբրև
4 գառներ՝ գայլերու մէջ։ ᵉՀետեր-
նիդ քսակ մի՛ առնէք, ո՛չ ալ տոպ-
րակ, և ո՛չ կօշիկներ. ᶠու ճամ-
5 բան մէկու մը բարև մի՛ տաք։ ᵍԵւ
ո՛ր տունն որ մտնէք, առաջ ըսէք.
6 †Բարև աս տանս։ Ու թէ որ հոն
‡բարևի արժանաւոր մարդ" կայ,
ձեր բարևը պիտի հանգչի անոր վը-
րայ, հապա թէ չէ՝ ձեզի պիտի
7 դառնայ։ ᵃԵւ ան տանը մէջ մնա-
ցէք, ու անոնցմէ կերէք ու խմե-
ցէք. ᵇինչու որ մշակը իր վարձքին
արժանի է. տունէ տուն մի՛ փո-
8 խուիք։ Եւ ո՛ր քաղաք որ մտնէք.
ու ձեզ ընդունին, ինչ որ առջև-
9 նիդ դրուի, կերէք. ᶜՈւ բժշկեցէք
անոր մէջի հիւանդները, և ըսէք
անոնց. ᵈԱստուծոյ թագաւորու-
10 թիւնը ձեզի մօտեցեր է։ Բայց ո՛ր
քաղաք որ մտնէք՝ ու ձեզ չըն-
դունին, անոր հրապարակները ել-
11 լելով՝ ըսէք. ᵉԱն փոշին ալ որ
ձեր քաղաքէն մեր ոտքերուն փա-
կած է, ձեզի կը թօթվենք. միայն
թէ աս գիտնաք՝ որ Աստուծոյ թա-
գաւորութիւնը ձեզի մօտեցեր է։
12 Ձեզի կ'ըսեմ, ᶠոր ան օրը Սոդոմի
դատաստանը աւելի դիւրին պիտի
ըլլայ, քան թէ ան քաղաքին։
13 ʰՎա՜յ քեզ Քորազին, վա՜յ քեզ
Բեթսայիդա. ⁱինչու որ եթէ Տիւ-
րոսի ու Սիդոնի մէջ եղած ըլլային
ան հրաշքները՝ որ ձեր մէջը եղան,
շատոնցմէ քուրձով՝ ու մոխիրի
մէջ նստելով ապաշխարած պիտի
14 ըլլային։ Բայց դատաստանին օրը
Տիւրոսին ու Սիդոնին աւելի դիւ-
րին պիտի ըլլայ, քան թէ ձեզի։
15 ʲԵւ դուն Կափառնայում՝ ᵏոր
մինչև երկինքը բարձրացած ես,
16 ˡմինչև դժոխքը պիտի իջնես։ ᵐԱն
որ ձեզի մտիկ կ'ընէ, ինծի մտիկ
կ'ընէ. ⁿև ան որ ձեզ կը մերժէ,
զիս կը մերժէ. ᵒև ան որ զիս կը
մերժէ, զիս խրկողը կը մերժէ։
17 ᵖԵւ եօթանասուն աշակերտները
դարձան ուրախութեամբ՝ ու ըսին.
Տէ՛ր՝ քու անունովդ դեւերն ալ մե-
18 զի կը հնազանդին։ Եւ ըսաւ ա-
նոնց. ᵠՍատանան փայլակի պէս
երկինքէն վար ինկած կը տեսնէի։
19 ʳԱհա՛ ձեզի իշխանութիւն կու
տամ օձերու ու կարիճներու՝ և
թշնամիին բոլոր զօրութեանը վրայ
կոխկըռտելու. ու բնաւ մէկ բան
20 մը ձեզի պիտի չվնասէ։ Բայց
դուք անոր վրայ մի՛ ուրախանաք
որ նոյն ոգիները ձեզի կը հնազան-
դին, հապա ուրախացէ՛ք՝ որ ˢձեր
անունները երկինքը գրուած են։
21 ᵗԱն նոյն ժամուն Յիսուս հո-
գիով ուրախացաւ՝ ու ըսաւ. Շը-
նորհակալ եմ քեզմէ ո՛վ Հայր՝
Տէր երկնի և երկրի, որ աս բանե-
րը ծածուկ պահեցիր իմաստուն-
ներէն և գիտուններէն, ու տղոց
յայտնեցիր. այո՛ ո՛վ Հայր, ինչու
որ քու աչքիդ ասանկ հաճելի ե-
22 ղաւ։ ᵘԱմէն բան ինծի՝ տրուե-

Յամի Տեառն 32

‡ Յովհ. խաղաղութեան որդի
ա Մատ. Ժ. 11.
բ Ա Կոր. Ժ. 27.
գ Մատ. Ժ. 10. Ա Կոր. Թ. 4. Ա Տիմ. Ե. 18.
դ Ղուկ. Թ. 2.
ե Մատ. Գ. 2. Դ. 17. Ժ. 7. Հմր 11.
զ Մատ. Ժ. 14. Գործ. ԺԳ. 51. ԺԸ. 6.
է Մատ. Ժ. 15. Մար. Զ. 11.
ը Մատ. ԺԱ. 21.
թ Եզեկ. Գ. 6.
ժ Մատ. ԺԱ. 23.
ի Ծն. ԺԱ. 4. Բ Օր. Ա. 28. Ես. ԺԴ. 13. Երեմ. ԾԱ. 53.
լ Տես Եզեկ. ԻԳ. 20. Ը. 18.
խ Մատ. Ժ. 40. Մար. Թ. 36. Յովհ. ԺԳ. 20.
ծ Ա Թես. Դ. 8.
կ Յով. Ե. 23.
հ Հմր 1.
ձ Յովհ. ԺԲ. 31. ԺԶ. 11. Յայտ. Թ. 1. ԺԲ. 8. 9.
ղ Մար. ԺԶ. 18. Գործ. ԻԸ. 5.
ճ Ել. ԼԲ. 32. Սաղ. ԿԹ. 28. Ես. Դ. 3. Դան. ԺԲ. 1. Փիլ. Դ. 3. Եբր. ԺԲ. 23. Յայտ. ԺԳ. 8. Ի. 12. ԻԱ. 27.
մ Մատ. ԺԱ. 25.
յ Մատ. ԻԱ. 18. Յովհ. Գ. 35. Ե. 27. ԺԷ. 2.

Յամի Տեառն 32

ՅՈՎՀ. Ա. 18. Զ. 44. 46.
ԻՄատ. ԺԳ. 16.
ՓՍ Պետ. Ա. 10.
ՐՄատ. ԺԹ. 16. ԻԲ. 35.
ՍՐ Օր. Զ. 5.
ԼՂև. ԺԹ. 18.
ԽՂև. ԺԸ. 5. Նեեմ. Թ. 29. Եզեկ. Ի. 11. 13. 21. Հռով. Ժ. 5.
ԾԳղ. ԺԶ. 15.
ԿՍաղ. ԾԸ. 11.
ՀՅովհ. Դ. 9.

ցաւ իմ Հօրմէս, ՚ու մէկը չգիտեր
թէ ո՛վ է Որդին, բայց միայն Հայ-
րը. և թէ ո՛վ է Հայրը, բայց
միայն Որդին. և ա՛ն որուն որ Որ-
դին կ'ուզէ յայտնել։
23 Եւ աշակերտներուն դառնալով՝
առանձին ըսաւ. Երանի ա՛ն աչ-
քերուն՝ որ ձեր տեսածները կը
24 տեսնեն. Քանզի կ'ըսեմ ձեզի, որ
՚շատ մարգարէներ և թագաւոր-
ներ ուզեցին ձեր տեսածները տես-
նել, ու չտեսա՛ն, և ձեր լսածնե-
րը լսել, ու չլսեցին։
25 Եւ ահա՛ մէկ օրինական մը ե-
լաւ, ու զանիկայ փորձելով՝ ըսաւ.
ՐՎա՛րդապետ՝ ի՞նչ ընեմ որ յա-
ւիտենական կեանքը ժառանգեմ,
26 Անիկայ ալ ըսաւ անոր. Օրէնքին
մէջ ի՞նչ գրուած է. ինտո՞ր կը
27 կարդաս։ Պատասխան տուաւ ա-
նիկայ՝ ու ըսաւ. ՍՔու Տէր Աս-
տուածդ սիրես քու բոլոր սրտէդ
ու քու բոլոր անձէդ և քու բոլոր
զօրութենէդ ու քու բոլոր միտքէդ,
և ԼՔու ընկերդ ալ քու անձիդ պէս։
28 Եւ ինքը ըսաւ անոր. Շիտակ
պատասխան տուիր. ատիկայ ըրէ.
29 Խու պիտի ապրիս։ Իսկ անիկայ
ուզելով Խինքզինքը արդարացընել,
ըսաւ Յիսուսին. Բայց իմ ընկերս
30 ո՞վ է։ Պատասխան տուաւ Յի-
սուս՝ ու ըսաւ. Մէկ մարդ մը Ե-
րուսաղէմէն Երիքով կ'իջնէր. ու
աւազակներու ձեռք ինկաւ, որո՛նք
մերկացուցին զանիկայ՝ ու վիրաւո-
րելով կիսամեռ թողուցին ու գա-
31 ցին։ Եւ պատահեցաւ որ քահա-
նայ մը ա՛ն ճամբայէն կ'իջնէր, ու
զանիկայ տեսնելով՝ ԿՍա՛ն դիի կող-
32 մէն անցաւ։ Նոյնպէս ալ Ղևտացի
մը ա՛ն տեղը հասնելով՝ գնաց ու
տեսաւ, և անդիի կողմէն անցաւ։
33 ՀԲայց Սամարացի մը որ ճամբոր-
դութիւն կ'ընէր, եկաւ անոր քովը,
34 ու զանիկայ տեսնելով՝ խղճաց. Եւ
մօտեցաւ անոր վէրքերը փաթթեց՝
վրան ձէթ և գինի թափելով. ու
իր գրաստին վրայ դնելով՝ տարաւ
անիկայ մէկ պանդոկ մը, և անոր
35 հոգ տարաւ։ Ու հետևեալ օրը
երբոր կ'ելլէր անկէ. երկու դա-
հեկան հանեց պանդոկապետին
տուաւ, և անոր ըսաւ. Հոգ տար
ատոր, ու ինչ որ աւելի ծախք
ընես, ես դառնալուս ես քեզի
36 կը վճարեմ։ Հիմա ա՛ն իրեքէն
ո՞րը քեզի կ'երևնայ ընկեր ըլլալ
37 աւազակներուն ձեռքը իյնողին։ Եւ
անիկայ ըսաւ. Ա՛ն որ անոր ողոր-
մութիւն ըրաւ։ Ա՛ն ատենը Յիսուս
ըսաւ անոր. Գնա՛ դուն ալ այնպէս
ըրէ։
38 Ու եղաւ որ երբ անոնք կ'երթա-

Յամի Տեառն 32

ՃՅով. ԺԱ. 1. ԺԲ. 2. 3.
ՄԱ Կոր. Է. 32. 35.
ՅԳղ. Ը. 35. Գործ. ԻԲ. 3.

յին. ինքը գեղ մը մտաւ. և մէկ
կնիկ մը ՃՄարթա անունով զանի-
39 կայ իր տունը ընդունեց։ Եւ ա-
նիկայ քոյր մը ունէր, որուն անու-
նը Մարիամ էր. ՄՈր ինքն ալ ՅՅի-
սուսի ոտքերուն քովը նստաւ, ու
40 անոր խօսքերը մտիկ կ'ընէր։ Բայց
Մարթա շատ սպասաւորութիւնով
զբաղած էր. եկաւ անոր քովը՝ ու
ըսաւ. Տէ՛ր՝ քու հոգդ չէ՞, որ իմ
քոյրս զիս մինակ թողուց սպասա-
ւորութեան մէջ. ուստի ատոր
41 զրուցէ՛ որ ինծի օգնէ։ Պատաս-
խան տուաւ Յիսուս՝ ու ըսաւ ա-
նոր. Մարթա՛ Մարթա, դուն
շատ բաներու համար հոգ ընելով
42 կը տագնապիս. Բայց մէկ բան մը
պէտք է. և Մարիամ ա՛ն աղէկ
բաժինը ընտրեց, որ իրմէ պիտի
չառնուի։

ԳԼ. ԺԱ

1 Քրիստոս իր աշակերտներուն կը սորվեցընէ աղօթք ընել, և կը պատուիրէ որ անդադար աղօթք ընեն. 11 հաստատելով որ այսպէս՝ Աստուած իրենց բարիքներ պիտի ընէ. 14 համր դև մը հանելով՝ կը յանդիմանէ հայհոյիչ փարիսեցիները, 28 և կը ցուցընէ թէ որո՛նք են երանելիները. 29 ժողովրդոց կը քարոզէ, 37 և կը յանդիմանէ փարիսեցւոց՝ դպրաց և օրինականաց կեղծաւորեալ սրբութիւնը։

Յա. Տ. 33
ՈՄատ. Զ. 9.
Ա Որոնք չուն ՚ին.
Բ Գղ. ԺԲ. 1. Ա.

1 Ու եղաւ որ մէկ տեղ մը աղօթք
կ'ընէր. ու երբոր դադարեցաւ,
իր աշակերտներէն մէկը ըսաւ ի-
րեն. Տէ՛ր՝ մեզի աղօթք ընե՛լ սոր-
վեցուր, ինտոր որ Յովհաննէս ալ
2 իր աշակերտներուն սորվեցուց։ Եւ
ըսաւ անոնց. Երբոր աղօթք կ'ը-
նէք, ըսէք. ՈՈ՛վ Հայր Ամեր՝ որ
երկինքն ես", քու անունդ սուրբ
ըլլայ. քու թագաւորութիւնդ
գայ, Աքու կամքդ ըլլայ, ինչպէս որ
երկինքը՝ անանկ ալ երկրիս վրայ".
3 Մեր ամէն աւուր հացը օրէ օր
4 մեզի տուր. Եւ մեզի ներէ՛ մեր
մեղքերը. ինչու որ մենք ալ կը
ներենք ա՛ն ամենուն՝ որ մեզի պար-
տական են. ու մեզ փորձութեան
մի տանիր. Ահապա չարէն մեզ ա-
զատէ՛"։
5 Եւ ըսաւ անոնց. Ձեզմէ ո՞վ
է անիկայ, որ բարեկամ մը ունե-
նայ, ու կէս գիշերուան մէջ երթայ
անոր՝ և ըսէ անոր. Բարեկամ՝
ինծի իրեք նկանակ փոխ տուր.
6 Ինչու որ իմ մէկ բարեկամս ճամ-
բայէ ինծի եկաւ, ու բան մը չու-
7 նիմ անոր առջևը դնելու. Անի-
կայ ալ ներսէն պատասխան տայ՝
և ըսէ. Զիս մի՛ յոգնեցըներ,
արդէն դուռը գոցուած է, ու
տղաքս իմ քովս անկողինի մէջ են,
չեմ կրնար ելլել՝ ու քեզի հաց
8 տալ։ Ձեզի կ'ըսեմ. Բ Թէև բա-

Յամի Տեառն 33

ք Մատ. է. 7։ Խս. 22։ Մար. ժա. 24։ Յով. ժե. 7։ Յակ. ա. 6։ ա Յով. ե. 22։
ր Մատ. է. 9։
ի Մատ. թ. 32։ ժբ. 22։
լ Մատ. թ. 34։ ժբ. 24։
խ Մատ. ժբ. 38։ ժզ. 1։
ծ Մատ. ժբ. 25։ Մար. գ. 24։
կ Յով. բ. 25։
* Յուն. տուն
ձ Եւլ. ը. 19։
ղ Մատ. ժբ. 29։ Մար. գ. 27։
ճ Եսա. ծգ. 12։ Կող. բ. 15։
մ Մատ. ժբ. 30։
յ Մատ. ժբ. 43։

րեկամութեան համար չելլէ տայ
անոր , սակայն անոր թախանձան-
քին համար պիտի ելլէ ու պէտք
9 եղածը տայ անոր ։ ք Ես ալ կ'ըսեմ
ձեզի . Խնդրեցէ՛ք՝ և պիտի տրուի
ձեզի . փնտռեցէ՛ք՝ ու պիտի գըտ-
նէք . դուռը զարկէ՛ք՝ և պիտի
10 բացուի ձեզի . Վասն զի ամէն ո՛վ
որ կը խնդրէ՝ կ'առնէ , և ո՛վ որ
կը փնտռէ՝ կը գտնէ , և ո՛վ որ
դուռը կը զարնէ՝ պիտի բացուի
11 անոր ։ ր Ձեզմէ ո՞վ է այն հայրը՝
որմէն իր որդին հաց որ ուզէ , մի-
թէ քա՞ր պիտի տայ անոր . կամ
թէ որ ձուկ ուզէ , միթէ ձուկին
12 տեղը օ՞ձ պիտի տայ անոր . Եւ
կամ թէ որ հաւկիթ ուզէ , միթէ
13 կարի՞ճ պիտի տայ անոր ։ Ուստի
եթէ դուք՝ որ չար էք , ձեր զա-
ւակներուն աղէկ ընծաներ տալ
գիտէք , ո՜րչափ աւելի ձեր Հայրը
երկինքէն Սուրբ Հոգին պիտի տայ
անոնց , որ իրմէ կը խնդրեն ։
14 ի Ու դև մը կը հանէր . և անիկայ
համր էր . ու եղաւ որ երբ դևը
ելաւ , համրը խօսեցաւ . և ժողո-
15 վուրդները զարմացան ։ լ Բայց ա-
նոնցմէ մէկ քանիները ըսին . Ա-
տիկայ դևերուն Բէեղզեբուղ իշ-
խանին միջոցովը դևերը կը հանէ ։
16 Ուրիշներն ալ փորձելով խ երկինքէն
17 նշան մը կ'ուզէին անկէ ։ ծ Բայց
ինքը կ գիտնալով անոնց խորհուրդ-
ները՝ ըսաւ անոնց . Ամէն թագա-
ւորութիւն իրեն դէմ բաժնուած՝
կ'աւերի . և տուն մը * իրեն դէմ
18 բաժնուած՝ կը կործանի . Հապա
թէ որ Սատանան իրեն դէմ բաժ-
նուած է , անոր թագաւորութիւ-
նը ինչպէ՞ս պիտի կենայ . որովհետև
կ'ըսէք թէ՝ Բէեղզեբուղով դևերը
19 կը հանեմ ։ Իսկ թէ որ ես Բէ-
եղզեբուղով դևերը կը հանեմ ,
ձեր որդի՞քը ինչով կը հանեն .
ուրեմն անոնք պիտի ըլլան ձեր դա-
20 տաւորները ։ ձ Բայց թէ որ ես Աս-
տուծոյ մատովը կը հանեմ դևերը ,
ուրեմն Աստուծոյ թագաւորու-
21 թիւնը ձեր վրայ հասած է ։ ղ Երբ-
որ զօրաւոր մարդ մը զէնքերը վրան
առած՝ իր տանը բակը կը պահ-
պանէ , անոր բաները խաղաղու-
22 թեան մէջ կը մնան . ճ Բայց երբոր
անկէ աւելի զօրաւորը վրան գալով
յաղթէ անիկայ , անոր զէնքերը
կ'առնէ՝ որոնց ինքը յուսացեր էր ,
և անկէ առածը կողոպուտը կը
23 բաժնէ ։ մ Ան որ իմ հետս չէ ,
ինծի հակառակ է . և ան որ ինծի
հետ չժողվեր , ցիրուցան կ'ընէ ։
24 յ Երբոր պիղծ ոգին մարդէ մը
կ'ելլէ , անջուր տեղուանք կը պը-
տըտի , հանգստութիւն կը փնտռէ .
ու երբոր չգտներ , կ'ըսէ . Դառ-
նամ նորէն իմ տունս՝ ուսկից որ
25 ելայ . Եւ կու գայ՝ զանիկա մաք-
րուած ու պատրաստուած կը գըտ-
26 նէ ։ Ան ատենը կ'երթայ և իր
հետը կ'առնէ եօթը ուրիշ ոգիներ
իրմէ աւելի չար , ու մտնելով՝ հոն
կը բնակին . ն և ան մարդուն վերջը՝
առջինէն գէշ կ'ըլլայ ։
27 Ու եղաւ որ երբ անիկայ աս
բաները կը խօսէր , ժողովուրդին
մէջէն մէկ կնիկ մը ձայնը վերցուց՝
ու ըսաւ անոր . շ Երանի՜ ան որո-
վայնին՝ որ քեզ կրեց , և ան ծի-
ծերուն՝ որ քեզի կաթ տուին ։
28 Եւ ինքը ըսաւ . ո Մանաւանդ թէ
երանի՜ անոնց՝ որ Աստուծոյ խօսքը
կը լսեն ու կը պահեն ։
29 չ Ու երբոր ժողովուրդները անոր
քովը կը դիզուէին , սկսաւ ըսել .
Աս ազգը չար է . նշան կ'ուզէ , և
ուրիշ նշան պիտի չտրուի անոր ,
բայց միայն Յովնան մարգարէին
30 նշանը ։ պ Քանզի ինչպէս որ Յով-
նան՝ Նինուէացիներուն նշան եղաւ ,
անանկ ալ Որդին մարդոյ աս ազ-
31 գիս պիտի ըլլայ ։ ջ Հարաւի թա-
գուհին դատաստանին օրը աս ազ-
գին մարդոցը դէմ պիտի ելլէ , ու
պիտի դատապարտէ զանոնք . ինչու
որ երկրի ծայրերէն եկաւ Սողոմո-
նին իմաստութիւնը լսելու . և ա-
հա Սողոմոնէն մեծ մէկը կայ հոս ։
32 Նինուէի մարդիկը դատաստանին
օրը աս ազգին դէմ պիտի ելլեն ,
ու պիտի դատապարտեն զանիկայ .
ռ ինչու որ Յովնանին քարոզու-
թեամբը զղջի եկան . և ահա
Յովնանէն մեծ մէկը կայ հոս ։
33 ս Մէկը ճրագը չվառեր՝ ծածուկ
տեղ մը դներ , ոչ ալ գրուանի
տակ . հապա աշտանակի վրայ , որ
ներս մտնողները լոյսը տեսնեն ։
34 վ Մարմինին ճրագը աչքն է . ուստի
երբոր աչքդ պայծառ է , բոլոր
մարմինդ ալ լուսաւոր կ'ըլլայ .
բայց երբոր աչքդ վատ է , մարմինդ
35 ալ մութ կ'ըլլայ ։ Ուրեմն զգո՛յշ
կեցիր , որ քու մէջդ եղած լոյսը
36 խաւար չըլլայ ։ Արդ՝ թէ որ քու
բոլոր մարմինդ լուսաւոր է , և
մութ մաս մը չունի , բոլորն ալ
լուսաւոր կ'ըլլայ , ինչպէս երբոր
ճրագ մը՝ իր փայլունութեամբը
քեզ կը լուսաւորէ ։
37 Ու երբոր աս բաները կը խօսէր ,
փարիսեցի մը կ'աղաչէր անոր՝ որ
իր քովը ճաշ ընէ . անիկայ ալ
38 մտաւ՝ սեղան նստաւ ։ տ Իսկ փա-
րիսեցին երբոր տեսաւ՝ զարմացաւ ,
որ նախ չլուացուեցաւ ճաշէն ա-
39 ռաջ ։ Եւ ր Տէրը ըսաւ անոր .
Հիմա դուք փարիսեցիներ՝ գաւա-

Յամի Տեառն 33

ն Յով. ե. 14։ Եբր. զ. 4։ ժ. 26։ բ Պետ. բ. 20։
շ Ղուկ. ա. 28։ 45։
ո Մատ. է. 21։ Ղուկ. ը. 21։ Յակ. ա. 25։
չ Մատ. ժբ. 38։ 39։
պ Յովն. ա. 17։ բ. 10։
ջ գ Թագ. ժ. 1։
ռ Յովն. գ. 5։
ս Մատ. ե. 15։ Մար. դ. 21։ Ղուկ. ը. 16։
վ Մատ. զ. 22։
տ Մար. է. 3։
ր Մատ. իգ. 25։

Յամ Տեառն 33

Թին ու պնակին դուրսի դին կը
մաքրէք , ու ձեր ներսիդին յա-
փշտակութեամբ և չարութեամբ
40 լեցուն է ։ Անխելքներ՝ ան որ
դուրսինը ըրաւ , ներսինն ալ ինքը
41 չըրա՞ւ ։ Սակայն անոնց մէջը ե-
ղածներէն ողորմութիւն տուէք ․
և ահա ամէն բան մաքուր կ'ըլլայ
42 ձեզի ։ Բայց վայ ձեզի փարիսե-
ցիներուդ՝ որ անանուխին ու փե-
գենային և բոլոր խոտեղէններուն
տասանորդը կը վճարէք , ու զանց
կ'ընէք իրաւունքը և Աստուծոյ
սէրը ․ ասոնք պէտք էր ընել , և ա-
43 նոնք չձգել ։ Վա՜յ ձեզի փարիսե-
ցիներուդ՝ որ ժողովարաններուն
մէջ առաջին աթոռները կը սի-
րէք , ու շուկաներուն մէջ բարե-
44 ները ։ Վա՜յ ձեզի կեղծաւոր դը-
պիրներ ու փարիսեցիներ՝ որ ան-
յայտ գերեզմաններու նման էք ,
որոնց վրայէն մարդիկ կը քալեն՝
ու չեն գիտեր ։
45 Եւ օրինականներէն մէկը պա-
տասխան տալով՝ ըսաւ անոր ․
Վարդապետ՝ ատ խօսքերը ըրու-
ցելով՝ մեզ ալ վար կը զարնես ։
46 Եւ անիկայ ըսաւ ․ Ձեզ ալ վա՜յ
օրինականներուդ , որ տանելու
դժուար բեռներ կը բեռցընէք
մարդոց , ու դուք մէկ մատովնիդ
47 ան բեռներուն չէք դպչիր ։ Վայ
ձեզի որ մարգարէներուն գերեզ-
մանները կը շինէք , ու ձեր հայրե-
48 րը սպաննեցին զանոնք ։ Ուրեմն
կը վկայէք և հաւանութիւն կու
տաք ձեր հարցը ըրածներուն ․ ին-
չու որ իրենք սպաննեցին զանոնք ,
ու դուք անոնց գերեզմանները կը
49 շինէք ։ Անոր համար ալ Աստու-
ծոյ իմաստութիւնը ըսաւ ․ Պի-
տի խրկեմ անոնց մարգարէներ ու
առաքեալներ ․ և անոնցմէ ոմը պի-
տի սպաննեն , ու ոմը հալածեն ․
50 Որպէս զի աշխարհի սկիզբէն հետէ
թափուած բոլոր մարգարէներուն
արիւնը աս ազգէն պահանջուի ,
51 Աբելին արիւնէն մինչև Զաքա-
րիային արիւնը , որ սեղանին ու
տաճարին մէջտեղը կորսուեցաւ ․
Ճշմարիտ կ'ըսեմ ձեզի , աս ազգէն
52 պիտի պահանջուի ։ Վա՜յ ձեզի
օրինականներուդ՝ որ գիտութեան
բանալին վերցուցիք ․ դուք չմը-
տաք , և մտնողներն ալ արգիլե-
ցիք ։
53 Ու երբոր աս բաները անոնց կը
զրուցէր , դպիրները ու փարիսեցի-
ները սկսան խիստ դժուարիլ , և
շատ բաներու վրայով անոր բեր-
54 նէն խօսք փնտռել ․ Եւ անոր դա-
րան պատրաստելով՝ կը փնտռէին
թէ ինչպէս անոր բերնէն բան մը

Մատ. իգ. 15 ։ Եզ. իբ. 7 ։ Գաղ. գ. 27 ։ Գղ. ժբ. 33 ։ Մատ. իգ. 23 ։ Մատ. իգ. 6 ։ Մար. ժբ. 38, 39 ։ Մատ. իգ. 27 ։ Սաղ. ե. 9 ։ Մատ. իգ. 4 ։ Մատ. իգ. 29 ։ Մատ. իգ. 34 ։ Ծն. դ. 8 ։ Բ Մն. իդ. 20, 21 ։ Մատ. իգ. 13 ։ Մար. ժբ. 13 ։

նորան , որ անոր վրայով ամբաս-
տանութիւն ընեն ։

## ԳԼ. ԺԲ

1 Քրիստոս իր աշակերտներուն կը պատուիրէ կեղծաւորութենէ զգուշ կենալ , ու չվախնալ իր վարդապետութիւնը քարոզելէն ․ 13 Մեծամեծ ամբարներ շինել մտածող հարուստին առակովը կը պատուիրէ ժողովրդոց որ զգուշ ըլլան ագահութենէ ։ 22 Պէտք չէ որ չափազանց հոգ ունենանք աշխարհային բաներու վրայ , 31 այլ Աստուծոյ թագաւորութիւնը խնդրենք , 33 ողորմութիւն տանք , 36 և պատրաստ ըլլանք՝ որ երբ մեր Տէրը գայ դուռը զարնէ , իսկոյն իրեն բանանք ։ 41 Քրիստոսի պաշտօնեաները պարտին իրենց յանձնուած պաշտօնը կատարել , 49 և հալածանքներու սպասել ։ 54 Պէտք է որ մարդիկ աս շնորհաց ժամանակին պատեհութիւնը՝ չկորսնցընեն , 58 վասն զի սոսկալի բան է մեռնիլ առանց հաշտուելու Աստուծոյ հետ ։

1 Աս միջոցիս երբոր բիւրաւոր ժո-
ղովուրդներ վրան ժողվուեցան ,
մինչև որ մէկզմէկ կը կոխէին , ըս-
կսաւ ըսել իր աշակերտներուն ․
Գինտ առաջ ինքզինքնիդ զգոյշ
պահեցէք փարիսեցւոց խմորէն , որ
2 է կեղծաւորութիւն ։ Ինչու որ
բան մը չկայ ծածուկ՝ որ պիտի չը-
յայտնուի , և գաղտուկ՝ որ պիտի
3 չգիտցուի ։ Ուստի ինչ որ մութ
տեղը զրուցեցիք , անիկայ լոյս
տեղը պիտի լսուի ․ և ան որ ներքին
սենեակներուն մէջ ականջի խօսե-
ցաք , տանիքներուն վրայ պիտի
4 քարոզուի ։ Բայց ձեզի իմ բա-
րեկամներուս կը զրուցեմ ․ Մի՛
վախնաք անոնցմէ՝ որ մարմինը կը
սպաննեն , ու անկէ ետև աւելի
բան մը ընելու կարողութիւն չու-
5 նին ։ Հապա ձեզի ցուցընեմ թէ
որմէ՛ պիտի վախնաք ․ Անկէ վախ-
ցէք՝ որ սպաննելէն ետև իշխանու-
թիւն ունի գեհեանը ձգելու ․ այո՛
6 կ'ըսեմ ձեզի , Անկէ վախցէք ։ Չէ՞
որ հինգ ճնճղուկը երկու դանկի կը
ծախուի ․ և անոնցմէ մէկը մոռ-
7 ցուած չէ Աստուծոյ առջին ։ Բայց
ձեր գլխուն բոլոր մազերն ալ համ-
րուած է ․ ուրեմն մի՛ վախնաք ,
ինչու որ դուք շատ ճնճղուկներէն
8 աւելի աղէկ էք ։ Եւ ձեզի կ'ը-
սեմ ․ Ամէն ով որ զիս կը դաւանի
մարդոց առջեւ , Որդին մարդոյ ալ
անիկայ պիտի դաւանի Աստուծոյ
9 հրեշտակներուն առջեւ ։ Բայց ան
որ զիս մարդոց առջեւ կ'ուրանայ ,
ուրացուած պիտի ըլլայ Աստուծոյ
10 հրեշտակներուն առջեւ ։ Եւ ա-
մէն ով որ Որդւոյ մարդոյ դէմ
բան կ'ըսէ , պիտի ներուի անոր ․
բայց ան որ Սուրբ Հոգիին դէմ
հայհոյութիւն կ'ընէ , պիտի չնե-
11 րուի անոր ։ Ու երբոր ձեզ ժո-
ղովարանները և իշխանութիւննե-
րու ու պետութիւններու առջև
տանելու ըլլան , հոգ մի՛ ընէք թէ

Յամ Տեառն 33

Մատ. ժզ. 6 ։ Մար. ը. 15 ։ Մատ. ժզ. 12 ։ Մատ. ժ. 26 ։ Մար. դ. 22 ։ Գղ. ը. 17 ։ Մատ. ժ. 28 ։ Եա. ծա. 7 ։ Տ. 12, 13 ։ Երեմ. ա. Տ. Յով. ժթ. 14, 15 ։ Մատ. ժ. 32 ։ Մար. ը. 38 ։ Բ Տիմ. բ. 12 ։ Ա Յով. բ. 23 ։ Մատ. ժբ. 31, 32 ։ Մար. գ. 28 ։ Ա Յով. ե. 16 ։ Մատ. ժ. 19 ։ Մար. ժգ. 11 ։ Գղ. իա. 14 ։

Յամի Տեառն 33

ինչպէ՛ս կամ ինչ պատասխան պի-
տի տաք, կամ ինչ պիտի ըսէք.
12 Վասն զի Սուրբ Հոգին պիտի
սորվեցընէ ձեզի նո՛յն ժամուն՝ ինչ
որ պէտք է խօսիլ։
13 Ժողովուրդին մէջէն մէկը ըսաւ
անոր. Վարդապե՛տ, ըսէ եղ-
բօրս, որ հօրս ինչքին ժառանգու-
14 թիւնը իմ հետս բաժնէ։ Ան ալ
ըսաւ անոր. [բ]Մարդ, ո՞վ զիս ձեր
վրայ դատաւոր կամ բաժին ընող
15 դրաւ։ Եւ ըսաւ անոնց. [գ]Նա-
յեցէք և զգուշացէ՛ք ագահութե-
նէն. ինչու որ մարդուս ստա-
ցուածքներուն աւելնալէն կախուած
16 չէ իր կեանքը։ Առակ մըն ալ
խօսեցաւ անոնց՝ ըսելով. Մէկ
հարուստ մարդու մը արտերը ա-
17 ռատ բերքեր տուին. Եւ ինքը կը
մտածէր ինքնիրեն՝ ու կ'ըսէր.
Ի՞նչ ընեմ, վասն զի տեղ չունիմ,
18 որ հոն իմ բերքերս ժողվեմ։ Եւ
ըսաւ. Աս ընեմ. իմ ամբարներս
քակեմ՝ ու ալ աւելի մեծ շինեմ,
և հոն ժողվեմ իմ բոլոր բերքերս
19 ու բարիքներս. Եւ իմ անձիս ը-
սեմ. [ե]Ո՛վ անձ, շատ բարիքներ
ունիս շատ տարիներու համար ժող-
վուած. հանգչէ՛, կեր, խմէ՛, և
20 ուրախ եղիր։ Բայց Աստուած ը-
սաւ անոր. Անմի՛տ, [զ]աս գիշեր
հոգիդ քեզմէ պիտի պահանջուի.
[է]ուստի ան քու պատրաստած բա-
21 ներդ որո՞ւն պիտի ըլլայ։ Այսպէս
է անիկայ՝ որ իր անձին համար
գանձ կը դիզէ, [ը]ու Աստուծոյ չը-
հարստանար։
22 Եւ ըսաւ իր աշակերտներուն.
Ասոր համար կ'ըսեմ ձեզի. [թ]Հոգ
մի՛ ընէք ձեր կեանքին համար՝ թէ
ինչ պիտի ուտէք, ոչ ալ մար-
մնին համար՝ թէ ինչ պիտի հագ-
23 նիք. Ինչու որ կեանքը կերակու-
րէն աւելի է, ու մարմինը հագուս-
24 տէն։ Նայեցէք ագռաւներուն,
որ ոչ կը սերմանեն և ոչ կը հըն-
ձեն, որոնք ոչ շտեմարաններ ու-
նին՝ ոչ ալ ամբարներ, [ժ]ու Աս-
տուած անոնք կը կերակրէ. դուք
որչափ աւելի լաւ էք թռչուննե-
25 րէն։ Եւ ձեզմէ ո՞վ կրնայ իր
հոգ ընելովը իր հասակին վրայ
26 կանգուն մը աւելցընել։ Հապա
թէ որ ամենափոքր բանին կարող
չէք, ուրիշ բաներուն համար ին-
27 չո՞ւ հոգ կ'ընէք։ Նայեցէք շու-
շաններուն՝ ինչպէս կ'աճին. ոչ
կ'աշխատին և ոչ կը մանեն. բայց
ձեզի կ'ըսեմ որ Սողոմոն ալ իր
բոլոր փառաւորութեանը մէջ ա-
նոնցմէ մէկուն պէս չհագուեցաւ։
28 Ուստի թէ որ խոտը որ այսօր դաշ-
տի մէջ է՝ ու վաղը փուռը կը ձը-

բ Յովհ. ժը. 36։
գ Ա Տիմ. զ. 7. 8։
ե Ժող. ժա. 9 · Ա Կոր. ժե. 32 · Յակ. ե. 5։
զ Յոբ. ի. 22 · իէ. 8 · Սաղ. ծբ. 7 · Յակ. դ. 14։
է Սաղ. լթ. 6 · Երեմ. ժէ. 11։
ը Մատ. զ. 20 · Հռ. 33 · Ա Տիմ. զ. 18, 19 · Յակ. բ. 5։
թ Մատ. զ. 25։
ժ Յոբ. լը. 41 · Սաղ. ծխէ. 9։

Յամի Տեառն 33

գուի, Աստուած անանկ կը հա-
գուեցընէ. որչափ աւելի ձեզ՝
29 թերահաւատներ։ Ալ դուք մի՛
փնտռէք թէ ինչ պիտի ուտէք,
և ինչ պիտի խմէք. ու մի՛ շը-
30 փոթիք։ Վասն զի ատ բոլոր բա-
ները աշխարհիս ազգերը կը փընտ-
ռեն. ու ձեր Հայրը գիտէ որ ատ
31 բաները ձեզի պէտք են։ [ի]Բայց
դուք Աստուծոյ թագաւորութիւ-
նը խնդրեցէք, և՛ ատ բոլոր բաներն
32 ալ ձեզի պիտի տրուի։ Մի՛ վախ-
նար պզտիկ հօտ. [լ]ինչու որ ձեր
Հայրը հաճեցաւ որ թագաւորու-
33 թիւնը ձեզի տայ։ [խ]Ծախեցէ՛ք
ձեր ստացուածքը, և ողորմութիւն
տուէք. [ծ]ձեզի չհիննալու քը-
սակներ պատրաստեցէք, երկ-
կինքը՝ չպակսելու գանձ մը, ուր
ո՛չ գողը կը մօտենայ՝ և ոչ ցեցը
34 կ'ապականէ։ Քանզի ձեր գանձը
ուր որ է, սիրտերնիդ ալ հոն պի-
35 տի ըլլայ։ [կ]Ձեր մէջքերը գօտեւո-
րած ըլլան, [հ]ու ճրագները վա-
36 ռած. Եւ դուք ան մարդոցը նման՝
որ իրենց տիրոջը կը սպասեն՝ թէ
ե՞րբ պիտի դառնայ հարսնիքէն. որ
երբ գայ և դուռը զարնէ, իսկոյն
37 բանան անոր։ [ձ]Երանի ան ծա-
ռաներուն, որ տէրը երբոր գայ՝
զանոնք արթուն պիտի գտնէ. Ճըշ-
մարիտ կ'ըսեմ ձեզի, որ ինքը գօ-
տին մէջքը պիտի կապէ՝ ու սեղան
նստեցընէ անոնք, և առաջ անց-
նելով սպասաւորութիւն պիտի ը-
38 նէ անոնց։ Եւ թէ որ գիշերուան
երկրորդ պահուն գայ, կամ երրորդ
պահուն գայ՝ ու անանկ գտնէ, ե-
39 րանելի են ան ծառաները։ [ղ]Բայց
աս գիտցէք, որ եթէ տանուտէրը
գիտնար թէ ո՛ր ատեն գողը կու
գայ, արթուն կը կենար, ու թող
չէր տար որ իր տունը ծակեն։
40 [ճ]Ուրեմն դուք ալ պատրաստ կե-
ցէք, քանզի Որդին մարդոյ կու
գայ անանկ ժամու մէջ՝ որ դուք
չէք կարծեր։
41 Եւ Պետրոս ըսաւ անոր. Տէ՛ր,
ատ առակը մեզի՞ կ'ըսես, թէ ամե-
42 նուն ալ։ Եւ Տէրը ըսաւ. [մ]Ու-
րեմն ո՞վ է ան հաւատարիմ ու ի-
մաստուն տնտեսը, որն որ տէրը իր
գերդաստանին վրայ պիտի դնէ, որ
43 ատենին անոնց ուտելիքը տայ։ Ե-
րանի է ան ծառային, որն որ իր
տէրը եկած ատենը՝ անանկ ըրած
44 պիտի գտնէ։ [յ]Ճշմարիտ կ'ըսեմ
ձեզի, որ իր բոլոր ունեցածքին վրայ
45 պիտի կեցընէ զանիկայ։ [ն]Հապա
թէ որ ան ծառան իր սրտին մէջը
ըսէ. Իմ տէրս իր գալը կ'ուշացը-
նէ. և սկսի ծառաները ու աղա-
խինները ծեծել, և ուտել ու խը-

ի Մատ. զ. 33։
լ Մատ. ժա. 25, 26։
խ Մատ. ժթ. 21 · Գործ. բ. 45 · դ. 34։
ծ Մատ. զ. 20 · Գլ. ժզ. 9 · Ա Տիմ. զ. 19։
կ Եփես. զ. 14 · Ա Պետ. ա. 13։
հ Մատ. իե. 1, Ճ։
ձ Մատ. իդ. 46։
ղ Մատ. իդ. 43 · Ա Թես. ե. 2 · Բ Պետ. գ. 10 · Յայտ. գ. 3 · ժզ. 15։
ճ Մատ. իդ. 44 · իե. 13 · Մար. ժգ. 33 · Գլ. իա. 34, 36 · Ա Թես. ե. 6 · Բ Պետ. գ. 12։
մ Մատ. իդ. 45 · իե. 21 · Ա Կոր. դ. 2։
յ Մատ. իդ. 47։
ն Մատ. իդ. 48։

Ցամի Տեառն 33

46 մել ու գինովնալ , Ան ծառային
տէրը պիտի գայ այնպիսի մէկ օր մը
որ չսպասեր , և այնպիսի մէկ ժամ մը
որ չգիտեր , և զանիկայ մէջտեղէն
պիտի կտրէ , ու անոր բաժինը ան-
հաւատարիմներուն հետ պիտի դնէ ։
47 "Եւ ան ծառան' որ իր տիրոջը
կամքը գիտէ , ու չպատրաստուիր ,
ոչ ալ անոր կամքը 'ի գործ կը
48 դնէ , շատ ծեծ պիտի ուտէ ։ ՟Բայց
ան որ չգիտեր' ու ծեծի արժանի
բան մը կ'ընէ , քիչ ծեծ պիտի
ուտէ . որուն որ շատ տրուեցաւ ,
շատ պիտի ուզուի անկէ , և որուն
որ աւելի յանձնուեցաւ , ալ աւե-
լի պիտի պահանջուի անկէ ։
49 "Ես կրակ ձգելու եկայ երկրիս
վրայ . ու ի՞նչ կ'ուզեմ թէ որ
50 արդէն բորբոքած է ։ "Բայց մկըր-
տութիւն մը ունիմ մկրտուելու .
և ինչպէս կը տագնապիմ մինչև որ
51 կատարուի ։ "Կը կարծէք թէ ես
երկրի վրայ խաղաղութի՞ւն տալու
եկայ . ձեզի կ'ըսեմ' Ոչ , "հապա
52 բաժանմունք . "ինչու որ ասկէ ետև
մէկ տան մէջ հինգը իրարմէ բաժ-
նուած պիտի ըլլան . իրեքը երկու-
53 քէն , ու երկուքը իրեքէն . Հայ-
րը պիտի բաժնուի որդիէն , և որ-
դին հօրմէն , մայրը աղջիկէն' ու
աղջիկը մօրմէն , կեսուրը իր հար-
սէն' ու հարսը իր կեսուրէն ։
54 Եւ ըսաւ ժողովուրդներուն .
"Երբոր արևմուտքին կողմէն ամպ
մը ելած կը տեսնէք , շուտ մը կ'ը-
սէք թէ , Անձրև պիտի գայ , և ա-
55 նանկ կ'ըլլայ ։ Ու երբոր հարաւա-
յին հովը կը փչէ կ'ըսէք թէ , Տաք
պիտի ըլլայ , և անանկ կ'ըլլայ ։
56 Կեղծաւորներ' երկրի ու երկինքի
երեսը քննելը գիտէք , հապա աս
ժամանակը ի՞նչպէս չէք քններ ։
57 Եւ ինչո՞ւ դուք ձեզմէ չէք որոշեր
58 իրաւունքը ։ "Երբոր դուն քու
ոսոխիդ հետ իշխանին երթալու ըլ-
լաս , "ճամբուն մէջ անկէ ազատե-
լու համար ջանք ըրէ . որ չըլլայ թէ
քեզ դատաւորին առջին քաշէ , ու
դատաւորը դահիճին ձեռքը տայ
քեզ , ու դահիճն ալ բանտը դնէ ։
59 Քեզի կ'ըսեմ . բնաւ պիտի չելլես
անկէ , մինչև որ վերջի լուման չը-
վճարես ։

Ցամի Տեառն 33

Թուոց . ժե . 30 ։ Օր . իե . 2 ։ Յով . թ . 41 ։ ժե . 22 ։ Գոր . ժէ . 30 ։ Յակ . դ . 17 ։ Ղև . ե . 17 ։ Տիմ . ա . 13 ։

Հմր 51 ։

Մատ . ի . 22 ։ Մար . ժ . 38 ։

Մատ . ժ . 34 ։ Հմր 49 ։

Միք . է . 6 ։ Յով . է . 43 ։ թ . 16 ։ ժ . 19 ։

Մատ . ժ . 35 ։

Մատ . ժզ . 2 ։

Առակ . իե . 8 ։ Մատ . ե . 25 ։

Սաղ . լը . 6 ։ Ես . ծե . 6 ։

## ԳԼ. ԺԳ

1 Քրիստոս ապաշխարութիւն կը քարոզէ ։ Գալիլեացւոց և ուրիշներուն կրած պատիժը յիշելով ։ 6 Անպտուղ թզենիին առակը ։ 11 Քրիստոս կծկտած կնիկը կը բժշկէ ։ 18 Մանանեխի հատին և խմորին առակովը կը ցուցնէ ճշմարտութեան խօսքին զօրաւոր ներգործութիւնը իր ընտրեալներուն սրտին մէջ ։ 24 կը խրատէ նեղ դռնէն ներս մտնելու ջանք ընել ։ 31 և կը յանդիմանէ Հերովդէսը ու Երուսաղէմը ։

1 Եւ ոմանք ան ատենը ներկայ գըտ-
նուելով' պատմեցին անոր' Գա-
լիլեացւոց վրայով , որոնց արիւնը
Պիղատոս իրենց զոհերուն հետը
2 խառնեց ։ Եւ Յիսուս պատաս-
խան տալով ըսաւ անոնց . Կը
կարծէ՞ք որ ան Գալիլեացիները
բոլոր Գալիլեացիներէն աւելի մե-
ղաւոր էին , որ ասանկ բաներ
3 քաշեցին ։ Ձեզի կ'ըսեմ' Ոչ . հա-
պա թէ որ չապաշխարէք , ամէնքդ
4 ալ անանկ պիտի կորսուիք ։ Կամ'
թէ ան տասնըութը հոգին' որոնց
վրայ Սելովամին մէջի աշտարակը
ինկաւ , և անոնք մեռցուց . կը
կարծէ՞ք որ անոնք Երուսաղեմի
մէջ բնակած բոլոր մարդիկներէն
5 աւելի պարտաւոր էին ։ Ձեզի
կ'ըսեմ' Ոչ . հապա թէ որ չա-
պաշխարէք , ամէնքդ ալ նոյնպէս
պիտի կորսուիք ։
6 Աս առակն ալ ըսաւ . "Մարդ
մը իր այգիին մէջ տնկուած թզե-
նի մը ունէր . ու եկաւ անկէ պը-
7 տուղ փնտռելու , և չգտաւ ։ Ուս-
տի ըսաւ այգեպանին . Ահա իրեք
տարի է որ կու գամ աս թզենիին
վրայ պտուղ փնտռելու , ու չեմ
գտներ . ալ ատիկայ կտրէ , ինչո՞ւ
8 համար գետինը խափանէ ։ Անիկայ
պատասխան տուաւ' ու անոր ը-
սաւ . Տէ՛ր աս տարի ալ ատիկայ
թող տուր , մինչև որ ասոր բոլոր-
9 տիքը փորեմ ու թրիք դնեմ , Եւ
թէ որ պտուղ տայ , աղէկ . հապա
թէ չէ' ետքը կտրես ատիկայ ։
10 Եւ շաբթը ժողովարաններուն մէ-
կուն մէջ շաբաթ օրը կը սորվեցը-
11 նէր ։ Եւ ահա մէկ կնիկ մը կար ,
որ հիւանդութեան ոգի մը ունէր
տասնըութը տարիէ 'ի վեր , ու
կծկտած էր , և ամենևին չէր կրնար
12 շիտակ կայնիլ ։ Ու Յիսուս զա-
նիկայ տեսնելով' իրեն կանչեց' և
ըսաւ անոր . Կնի՛կ' դուն քու հի-
ւանդութենէդ արձակուած ես ։
13 "Ու ձեռքը անոր վրայ դրաւ . և
իսկոյն շիտկուեցաւ , ու փառք կու
14 տար Աստուծոյ ։ Իսկ ժողովարա-
նին իշխանը պատասխան տուաւ
բարկանալով' որ Յիսուս շաբաթ
օրը բժշկեց , և ըսաւ ժողովուր-
դին . "Վեց օր կայ' որոնց մէջ ար-
ժան է գործ գործել , ուստի ան
օրերը եկէք բժշկուեցէք , "ու չէ
15 թէ շաբաթ օրը ։ Ան ատենը Տէ-
րը պատասխան տուաւ անոր' ու
ըսաւ . Կեղծաւորներ' "ձեզմէ ամէն
մէկը շաբաթ օրը իր եզը կամ էշը
մսուրէն չարձըկեր' որ տանի ջուր
16 տայ . "Հապա ասիկայ որ Աբ-
րահամի աղջիկ էր , որ ահա տասն-
ութը տարի Սատանան զանիկայ

Ցամի Տեառն 33

Ես . ե . 2 ։ Մատ . իա . 19 ։

Մար . ժզ . 18 ։ Գոր . թ . 17 ։

Ել . ի . 9 ։

Մատ . ժբ . 10 ։ Մար . գ . 2 ։ Ղուկ . զ . 7 ։ ժդ . 3 ։

Ղուկ . ժդ . 5 ։

Ղուկ . ժթ . 9 ։

Յամի Տեառն 33

կապէն , չէ՞ր վայլեր որ շաբաթ
17 օրը այն կապէն արձակուի ։ Եւ աս
բանը որ ըսաւ , իրեն հակառակ
կեցողները ամէնքն ալ ամօթով
մնացին . ու բոլոր ժողովուրդը
կ'ուրախանար անոր ամէն փառաւոր
գործքերուն համար՝ որ իրմէն կ'ըլ-
լար ։
18 ժԵւ ըսաւ . Աստուծոյ Թագա-
ւորութիւնը ի՞նչ բանի կը նմա-
նի , ու ի՞նչ բանի նմանցընեմ
19 անիկայ ։ Մանանեխի հատի նման
է , որն որ մարդ մը առաւ՝ իր պար-
տէզը ձգեց . և աճեցաւ ու մեծ
ծառ եղաւ . ու երկնից թռչուննե-
րը անոր ճիւղերուն վրայ բնակե-
ցան ։
20 Դարձեալ ըսաւ . Աստուծոյ
Թագաւորութիւնը ի՞նչ բանի նը-
21 մանցընեմ ։ Խմորի նման է , որն
որ կնիկ մը առաւ՝ իրեք գրիւ ա-
լիւրի մէջ պահեց , մինչև որ ամէնն
ալ խմորեցաւ ։
22 ըԵւ քաղաքները ու գեղերը
պտըտելով՝ կը սորվեցընէր , ու
դէպ 'ի Երուսաղէմ ճամբայ կ'ը-
23 նէր ։ Եւ մէկը ըսաւ անոր . Տէ՛ր
քիչո՞ւ են անոնք որ պիտի փըր-
կուին ։ Անիկայ ալ ըսաւ ա-
24 նոնց . թՋանք ըրէք որ նեղ դըռ-
նէն մտնէք . քանզի կ'ըսեմ ձե-
զի , որ ժշատերը մտնել պիտի ու-
25 զեն , և պիտի չկրնան ։ իԱնկէ ե-
տև որ տանուտէրը ելլէ ու նչուռը
գոցէ , և դուք սկսիք դուրսը կե-
նալ , ու դուռը զարնել և ըսել ,
լՏէ՛ր՝ Տէր , բաց մեզի . ան ալ
պատասխան տալով պիտի ըսէ ձե-
զի . խՁեզ չեմ ճանչնար ուսկից
26 էք ։ Ան ատենը պիտի սկսիք ըսել .
Մենք քու առջևդ կերանք ու խմե-
ցինք , և դուն մեր փողոցներուն
27 մէջը սորվեցուցիր ։ ծԵւ անիկայ
պիտի ըսէ . Ձեզի կ'ըսեմ , ձեզ
չեմ ճանչնար ուսկից էք , կմէկ
դի կեցէք ինծմէ բոլոր անիրա-
28 ւութիւն գործողներդ ։ հՀոն պի-
տի ըլլայ լալ՝ ու ակռաներ կը-
ճըռցընել , ձԵրբոր տեսնէք Աբ-
րահամը ու Իսահակը և Յակոբը
ու բոլոր մարգարէները Աստուծոյ
Թագաւորութեանը մէջ , ու ձեզ
29 դուրս հանած ։ Եւ պիտի գան
արևելքէն ու արևմուտքէն և հիւսի-
սէն ու հարաւէն , ու պիտի բազ-
մին Աստուծոյ Թագաւորութեանը
30 մէջ ։ ղԵւ ահա կան յետիններ՝ որ
առաջիններ պիտի ըլլան , ու կան
առաջիններ՝ որ յետիններ պիտի
ըլլան ։
31 Նոյն օրը մէկ քանի փարիսեցի-
ներ եկան՝ ու ըսին անոր . Ելի՛ր՝
ու գնա ասկէ , ինչու որ Հերովդէս

ժ Մատ. ժգ. 31 ։ Մար. դ. 30 ։
ը Մատ. թ. 35 ։ Մար. զ. 6 ։
թ Մատ. է. 13 ։
ժ Յօհ. է. 34 ։ ը. 21 ։ ժգ. 33 ։ Հռովմ. թ. 31 ։
ի Սաղ. լը. 6 ։ Ես. ծե. 6 ։
լ Մատ. իե. 10 ։
խ Գլ. զ. 46 ։
ծ Մատ. է. 23 ։ իե. 12 ։
կ Մատ. է. 23 ։ իե. 41 ։ Հմր 25 ։
հ Սաղ. զ. 8 ։ Մատ. իե. 41 ։
ձ Մատ. ը. 12 ։ ժգ. 42 ։ իդ. 51 ։
ղ Մատ. ը. 11 ։
ճ Մատ. ժթ. 30 ։ ի. 16 ։ Մար. ժ. 31 ։

32 քեզ սպաննել կ'ուզէ ։ Եւ ինքը
ըսաւ անոնց . Գացէ՛ք՝ ան աղուէ-
սին ըսէք . Ահա ես դևեր կը հա-
նեմ ու բժշկութիւններ կը կատա-
րեմ այսօր և վաղը , ու երրորդ օրը
33 մպիտի կատարուիմ ։ Միայն թէ
պէտք է որ այսօր ու վաղը և մէկալ
օրը պտըտիմ . վասն զի . կարելի
չէ որ մարգարէ մը Երուսաղէմէն
34 դուրս կորսուի ։ յՈ՛վ Երուսաղէմ՝
Երուսաղէմ, որ մարգարէները կը
սպաննէիր , ու քեզի խրկուածները
կը քարկոծէիր . քանի՛ անգամ քու
տղաքներդ ժողվել ուզեցի՝ ինչպէս
որ հաւը իր ձագերը թևերուն տա-
կը կը ժողվէ , և դուք չուզեցիք ։
35 նԱհա ձեր տունը ձեզի աւերակ պի-
տի մնայ . սակայն ձեզի կ'ըսեմ ,
որ ալ զիս պիտի չտեսնէք , մինչև
գայ ան ժամանակը որ պիտի ըսէք ,
շՕրհնեա՛լ է ան՝ որ Տէրոջը անու-
նովը կու գայ ։

Յամի Տեառն 33

մ Եբր. ը. 10 ։
յ Մատ. իգ. 37 ։
ն Ղև. իզ. 31 ։ 32 ։ Սաղ. կթ. 25 ։ Ես. ա. 7 ։ Դան. թ. 27 ։ Միք. գ. 12 ։
շ Սաղ. ճժը. 26 ։ Մատ. իա. 9 ։ Մար. ժա. 10 ։ Գլ. ժթ. 38 ։ Յօհ. ժբ. 13 ։

## ԳԼ. ԺԴ

2 Քրիստոս շաբաթ օրը կը բժշկէ ջրգողեալ մարդը . 7 կը սորվեցընէ խոնարհ ըլլալ . 12 և աղքատները ճաշի հրաւիրել . 16 ընթրիքին առակովը կը ցուցընէ թէ աշխարհասէր անձինք՝ որ Աստուծոյ խօսքը կ'անարգեն , դուրս պիտի մնան երկնքէն ։ 25 Քրիստոսի աշակերտիլ ուզողները պէտք է որ յառաջագոյն խորհին թէ իրենց խաչը պիտի կրեն , որ չըլլայ թէ ետքը ամօթալից եղանակաւ ետ քաշուին իրմէն . 34 ու բոլորովին անպիտան ըլլան՝ իր համը կորսնցուցած աղի պէս ։

1 Եւ եղաւ որ երբ ինքը շաբաթ օր
մը փարիսեցւոց գլխաւորներուն
մէկուն տունը մտաւ հաց ուտելու ,
2 ու անոնք անոր կը սպասէին ։ Եւ
ահա հոն ջրգողեալ մարդ մը կար
3 իր առջևը ։ Եւ Յիսուս պատաս-
խան տուաւ՝ ու խօսեցաւ օրինա-
կաններուն ու փարիսեցիներուն՝ ը-
սելով . աԱրժա՞ն է շաբաթ օրը
4 բժշկել ։ Անոնք ալ լուռ կեցան .
և ինքը բռնեց անիկայ՝ բժշկեց ու
5 ճամբեց . Եւ պատասխան տալով
ըսաւ անոնց . բՁեզմէ որո՞ւն էշը
կամ եզը հորը իյնալու ըլլայ , ու
շուտ մը չհանէր անիկայ շաբաթ
6 օրը ։ Եւ աս բաներուս չկրցան
անոր պատասխան տալ ։
7 Առակ մը զրուցեց ան հրաւի-
րուած մարդոց ալ , երբոր տեսաւ
թէ ինչպէս առաջին բազմոցները
կ'ընտրէին , ու ըսաւ անոնց .
8 Երբոր մէկէ մը հարսնիքի հրաւի-
րուիս , առաջին բազմոցին վրայ մի՛
նստիր . չըլլայ որ քեզմէ աւելի
պատուաւոր մէկն ալ հրաւիրուած
9 ըլլայ անկէ . Եւ ան որ քեզ ու
անիկայ հրաւիրեց , գայ զրուցէ
քեզի . Ասոր տեղ տուր . և անկէ
ետև սկսիս ամօթով յետին տեղը
10 բռնել ։ գՀապա երբոր հրաւի-

ա Մատ. ժբ. 10 ։
բ Ել. իգ. 5 ։ Օր. իբ. 4 ։ Գլ. ժգ. 15 ։
գ Առակ. իե. 6. 7 ։

Յամ Տեառն 33

ըուխս , գնա յետին տեղը նստէ .
որ երբ քեզ հրաւիրողը գայ , քե-
զի ըսէ . Բարեկամ՝ վեր հրամմէ .
ան ատենը քու հետդ նստողներուն
առջևը քեզի փառք կ'ըլլայ ։
11 ա Վասն զի ամէն ով որ իր անձը
կը բարձրացընէ , պիտի խոնարհի .
և ով որ իր անձը կը խոնարհեցընէ ,
պիտի բարձրանայ ։
12 Ու զինքը հրաւիրողին ալ ըսաւ .
Երբոր ճաշ կամ ընթրիք կ'ընես ,
մի կանչեր քու բարեկամներդ , ոչ
ալ քու եղբայրներդ , և ոչ քու
ազգականներդ , ու ոչ ալ հա-
րուստ դրացիներդ , որ չըլլայ թէ
անոնք ալ փոխարէնը քեզ հրա-
ւիրեն , ու քեզի հատուցում ըլլայ ։
13 Հապա երբոր հացկերոյթ կ'ընես ,
ե աղքատներ , պակասաւորներ , կա-
14 ղեր ու կոյրեր հրաւիրէ . Ու երա-
նելի պիտի ըլլաս . ինչու որ ա-
նոնք չեն կրնար փոխարէնը քեզի
հատուցանել . հապա արդարնե-
րուն յարութիւն առած ատենը՝
փոխարէնը քեզի պիտի հատուցուի ։
15 Եւ սեղան նստողներէն մէկը
երբոր լսեց աս խօսքը՝ ըսաւ անոր .
զ Երանի անոր՝ որ Աստուծոյ թա-
գաւորութեանը մէջ հաց պիտի
16 ուտէ ։ է Եւ ինքը ըսաւ անոր .
Մէկ մարդ մը մեծ ընթրիք ըրաւ ,
17 ու շատ մարդիկ հրաւիրեց ։ ը Եւ
ընթրիքին ատենը ղրկեց իր ծա-
ռան , որ հրաւիրուածները կանչէ ,
ըսելով . Եկէք , ինչու որ արդէն
18 ամէն բան պատրաստ է ։ Եւ ա-
մէնքը մէկէն սկսան ետ քաշուիլ .
առջինը անոր ըսաւ . Ես արտ մը
ծախու առի , ու պէտք է որ ելլեմ
տեսնեմ անիկայ . կ'աղաչեմ քեզի ,
19 զիս հրաժարուած սեպէ ։ Եւ
միւսը ըսաւ . Հինգ զոյգ եզ ծա-
խու առի , ու կ'երթամ որ անոնք
փորձեմ . կ'աղաչեմ քեզի , զիս
20 հրաժարուած սեպէ ։ Եւ միւսը
ըսաւ . Կնիկ առի , ու անոր հա-
21 մար չեմ կրնար գալ ։ Եւ ան
ծառան եկաւ՝ ու իր տիրոջը պատ-
մեց աս բաները . ան ատենը բար-
կացաւ տանուտէրը , ու ըսաւ իր
ծառային . Շուտով քաղաքին հը-
րապարակները ու փողոցները ելիր ,
և աղքատները ու պակասաւորնե-
րը , և կաղերը ու կոյրերը հոս
22 մտցուր ։ Ծառան ալ ըսաւ .
Տէ՛ր՝ եղաւ ինչ որ հրամայեցիր ,
23 ու տակաւին տեղ կայ ։ Եւ Տէրը
ըսաւ ծառային . Ելի՛ր ճամբաները
ու ցանկերը , և զանոնք ստիպէ
ներս մտնելու , որ տունս լեցուի ։
24 Քանզի կ'ըսեմ ձեզի , ը որ ան հրա-
ւիրուածներէն մէկն ալ իմ ընթ-
րիքէս համը պիտի չառնէ ։

ա Յոբ. իբ. 29 ; Սաղ. ժը. 27 ; Առակ. իթ. 23 ; Մատ. իգ. 12 ; Ղուկ. ժը. 14 ; Յակ. դ. 6 ; ա Պետ. ե. 5 ;
ե Նեէմ. ը. 10, 12 ;
զ Յայտ. ժթ. 9 ;
է Մատ. իբ. 2 ;
ը Առակ. թ. 2, 5 ;
ը Մատ. իա. 43 ; իբ. 8 ; Գործ. ժգ. 46 ;

25 Ու իր հետը շատ ժողովուրդներ
կ'երթային . և դառնալով անոնց
26 ըսաւ . ժ Թէ որ մէկը ինծի կու
գայ , ի ու չատեր իր հայրը և մայրը ,
ու կինը և զաւակները , ու եղբայր-
ները և քոյրերը , նաև իր կեանքն
ալ , չկրնար իմ աշակերտս ըլլալ ։
27 ի Եւ ով որ իր խաչը չվերցըներ՝ ու
իմ ետևէս գար , չկրնար իմ աշա-
28 կերտս ըլլալ ։ ծ Վասն զի ձեզմէ
ո՞վ աշտարակ մը շինել ուզելով ,
առաջ չնստիր ու հաշիւ ըներ ծախ-
քը , թէ անիկայ լմնցընելու կարո-
29 ղութիւն ունի՞ . Որ չըլլայ թէ
երբ հիմը դնէ , ու չկրնայ լմնցը-
նել , բոլոր տեսնողները սկսին ա-
30 նիկայ ծաղր ընել , Եւ ըսել թէ ,
Աս մարդը սկսաւ շինել , ու չկրցաւ
31 լմնցընել ։ Կամ թէ ո՞ր թա-
գաւոր ուրիշ թագաւորի մը հետ
պատերազմելու երթալով , առաջ
չնստիր ու խորհիր , թէ արդեօք
տասը հազարով կրնա՞յ դէմ կե-
նալ անոր՝ որ քսան հազարով իր
32 վրայ կու գայ ։ Հապա թէ չէ՝
քանի որ անիկայ հեռու է , դես-
պան ղրկելով՝ խաղաղութիւն կը
33 խնդրէ ։ Ասնկ ասանկ ալ ձեր
մէջէն ամէն մէկը՝ թէ որ իր բոլոր
ստացուածքէն ետ չկենայ , չկրնար
34 իմ աշակերտս ըլլալ ։ ձ Աղը աղէկ
բան է . բայց թէ որ աղը իր համը
կորսընցընէ , ինչո՞վ պիտի հա-
35 մեմուի ։ Ո՛չ հողի ու ոչ թրիքի
տեղ օգտակար կ'ըլլայ , հապա ա-
նիկայ դուրս կը նետեն ։ Ան որ
լսելու ականջ ունի , թող լսէ ։

## ԳԼ. ԺԵ

1 Մոլորեալ ոչխարին , 8 կորսուած դրամին , 11 և անառակ որդիին առակները ։

1 ա Նու բոլոր մաքսաւորները ու մե-
ղաւորները անոր կը մօտենա-
2 յին իրմէն լսելու համար ։ Եւ փա-
րիսեցիները ու դպիրները տրտունջ
կ'ընէին՝ ու կ'ըսէին . Ասիկայ մե-
ղաւորները կ'ընդունի , բ ու անոնց
հետ կ'ուտէ ։
3 Եւ անիկայ աս առակը խօսեցաւ
4 անոնց՝ ըսելով . գ Ձեզմէ ո՞վ է ան
մարդը՝ որ հարիւր ոչխար ունենայ ,
և անոնցմէ մէկը որ կորսընցընէ ,
իննսունըինը չը՞ձգեր անապատին
մէջ՝ ու ան կորսուածին ետևէն եր-
թար , մինչև որ զանիկայ գտնէ ։
5 Ու երբոր կը գտնէ , ուրախանալով
իր ուսերուն վրայ կը դնէ զանիկայ ,
6 Եւ տունը գալով , կը կանչէ բա-
րեկամները ու դրացիները , ու ա-
նոնց կ'ըսէ . Ուրախ եղէք ինծի
հետ , ինչու որ իմ դ կորսուած ոչ-
7 խարս գտայ ։ Ձեզի կ'ըսեմ՝ որ
այսպէս ուրախութիւն պիտի ըլլայ

Յամ Տեառն 33

ժ Օր. ժգ. 6 ; լգ. 9 ; Մատ. ժ. 37 ;
ի Հռով. թ. 13 ;
ի Յայտ. ժբ. 11 ;
ի Մատ. ժզ. 24 ; Մար. ը. 34 ; Ղուկ. թ. 23 ; բ Տիմ. գ. 12 ;
ծ Առակ. իդ. 27 ;
ձ Մատ. ե. 13 ; Մար. թ. 49 ;
ա Մատ. թ. 10 ;
բ Գործ. ժա. 3 ; Գաղ. բ. 12 ;
գ Մատ. ժը. 12 ;
դ ա Պետ. բ. 10, 25 ;

Յամի Տեառն 33

ե Գղ. ե. 32։

երկինքը մէկ մեղաւորի մը համար
որ կ'ապաշխարէ, Էքան թէ իննսու-
նունինը արդարներուն համար՝
որ անոնց ապաշխարութիւն պէտք
8 չէ ։ Կամ թէ ո՞վ է ան կնիկը՝
որ տասը դրամ ունենայ. ու թէ
որ դրամ մը կորսնցընէ, ճրագ
չը՞վառեր, ու տանը մէջ աւել
զարներ, և զգուշութեամբ փընտ-
9 ռեր, մինչև որ գտնէ ։ Ու երբոր
կը գտնէ, կը կանչէ բարեկամները
ու դրացիները, և կ'ըսէ. Ուրախ
եղէք ինծի հետ, ինչու որ իմ կոր-
10 սընցուցած դրամս գտայ ։ Անանկ
ալ՝ ձեզի կ'ըսեմ, ուրախութիւն
կ'ըլլայ Աստուծոյ հրեշտակներուն
առջևը մէկ մեղաւորի մը համար որ
կ'ապաշխարէ ։
11 Եւ ըսաւ. Մէկ մարդ մը երկու
12 որդի ունէր. Ու անոնցմէ պզտիկը
հօրը ըսաւ. Հայր՝ քու ստացուած-
քէդ ինծի իյնալու բաժինը տուր
ինծի. ան ալ բաժնեց անոնց՝ իր
13 ունեցածը ։ Եւ շատ օրեր չանց-
ցած՝ պզտիկ որդին բոլոր բաները
ժողվեց՝ ու հեռու երկիր մը գնաց,
և հոն անառակութեամբ ապրելով՝
14 իր ունեցածը փճացուց ։ Ու երբ-
որ ամէնը հատցուց, ան երկրին
մէջ սաստիկ սով մը եղաւ, ու
15 ինքը-սկսաւ չքաւոր ըլլալ ։ Եւ
գնաց ան երկրին քաղաքացիներէն
մէկուն քովը մտաւ. ան ալ իր
ագարակը խրկեց զանիկայ՝ խոզեր
16 արածելու համար ։ Եւ կը փա-
փաքէր խոզերուն կերած եղջիւրէն
իր փորը լեցընելու. ու մէկը չէր
17 տար անոր ։ Եւ ինքզինքին գալով՝
ըսաւ. Քանի՛ բանուորներ կան իմ
հօրս քովը հացով լեցուած, ու
ես հոս սովամահ կը կորնչիմ.

զ Մար. ժբ. 44։

18 Ելլեմ՝ երթամ իմ հօրս, և ըսեմ
անոր. Հա՛յր՝ մեղանչեցի երկինքին
19 դէմ ու քու առջևդ, Եւ ալ ար-
ժանի չեմ քու որդիդ ըսուելու.
զիս քու վարձկաններուդ մէկուն
20 պէս ըրէ ։ Ու ելաւ իր հօրը եկաւ.
Եւ դեռ որ ինքը շատ հեռու էր,
հայրը տեսաւ զանիկայ՝ ու գութը
շարժեցաւ, և վազելով՝ անոր պա-
րանոցին վրայ ինկաւ, ու համբու-
21 րեց զանիկայ ։ Որդին ալ ըսաւ
անոր. Հա՛յր՝ մեղանչեցի երկինքին
դէմ ու քու առջևդ, և ալ ար-
ժանի չեմ քու որդիդ ըսուելու ։
22 Բայց հայրը ըսաւ իր ծառաներուն.
Հանեցէ՛ք առաջին պատմուճանը՝
ու հագցուցէ՛ք անոր, և մատնի
դրէք անոր ձեռքը, ու կօշիկներ
23 անոր ոտքերը. Եւ պարարտ զուա-
րակը բերէ՛ք մորթեցէ՛ք, և ուտենք
24 ու ուրախ ըլլանք. Ինչու որ աս
իմ որդիս մեռած էր՝ ու ողջըն-

է Գոր. բ. 39։ Եփե. բ. 13, 17։

ը Սաղ. ծա. 4։

ր Հմր 32։ Եփե. բ. 1։ ե. 14։ Յայտ. գ. 1։

ցաւ. կորսուած էր՝ ու գտնուե-
25 ցաւ. և սկսան ուրախ ըլլալ ։ Ու
անոր մեծ որդին ագարակն էր. ու
երբոր կու գար՝ ու տանը մօտե-
ցաւ. նուագարաններուն և պարե-
26 րուն ձայնը լսեց ։ Ու ծառաներէն
մէկը իրեն կանչելով՝ կը հարցընէր,
27 թէ աս ի՞նչ է ։ Անիկայ ալ ը-
սաւ անոր, Եղբայրդ եկաւ, ու
հայրդ պարարտ զուարակը մոր-
թեց. ինչու որ ողջ առողջ ձեռք
28 ձգեց զանիկայ ։ Իսկ ինքը բար-
կացաւ՝ ու չէր ուզեր ներս մտնել.
ուստի իր հայրը դուրս ելլելով
29 կ'աղաչէր անոր ։ Եւ անիկայ պա-
տասխան տալով՝ ըսաւ հօրը. Ահա՛
այսչափ տարի է որ քեզի կը ծա-
ռայեմ, ու բնաւ քու խօսքէդ
դուրս չելայ, ու ինծի երբէք մէկ
ուլ մը չտուիր, որ իմ բարեկամ-
ներուս հետ ուրախութիւն ընէի ։
30 Բայց երբոր եկաւ աս քու որդիդ՝
որ քու ստացուածքդ բոզերու հետ
կերաւ ; անոր մորթեցիր պարարտ
31 զուարակը ։ Եւ անիկայ ըսաւ ա-
նոր. Որդեակ՝ դուն միշտ իմ հետս
ես, ու իմ բոլոր ունեցածս քուկդ
32 է. Սակայն պէտք էր ուրախ ըլ-
լալ և խնդալ. ժ ինչու որ աս քու
եղբայրդ մեռած էր ու ողջընցաւ,
կորսուած էր ու գտնուեցաւ ։

ժ Հմր 24։

## ԳԼ. ԺԶ

1 Անիրաւ տնտեսին առակը. 14 Քրիստոս կը յանդիմանէ արծաթասէր փարիսեցւոց կեղծաւորութիւնը ։ 19 Հեշտասէր մեծատունը և աղքատ Ղազարոսը ։

1 Ու իր աշակերտներուն ալ ըսաւ.
Մէկ հարուստ մարդ մը կար,
որ տնտես մը ունէր. և անոր վրա-
յով գանգատ եղաւ իրեն՝ որպէս
թէ իր ունեցածը կը փճացընէ ։
2 Ուստի կանչեց զանիկայ՝ ու ըսաւ
անոր. Ի՞նչ է աս՝ որ քեզի հա-
մար կը լսեմ. քու տնտեսութեա-
նըդ հաշիւը տուր, ինչու որ ալ
3 չես կրնար տնտես ըլլալ ։ Եւ տըն-
տեսը իր մտքին մէջ ըսաւ. Ի՞նչ
ընեմ, որովհետև իմ տէրս տնտե-
սութիւնը ինծմէ կ'առնէ. *հո-
ղագործութիւն չեմ կրնար ընել"
4 մուրալու կ'ամչնամ ։ Գիտեմ
ինչ պիտի ընեմ, որպէս զի երբոր
ես տնտեսութենէս մերժուիմ, զիս
5 իրենց տունը ընդունին ։ Եւ իր
տիրոջը պարտականները մէկիկ մէ-
կիկ իրեն կանչելով՝ ըսաւ առջի-
նին. Դուն իմ տիրոջս որչափ
6 պարտք ունիս ։ Ան ալ ըսաւ.
Հարիւր մար ձէթ. և ըսաւ ա-
նոր. Գիրդ առ՝ ու շուտով նստէ
7 յիսուն գրէ. Ետքը միւսին ը-
սաւ. Դուն ալ որչափ պարտք

* Յուն. չեմ կրնար բըրել։

Յամ Տեառն 33

ա Յոհ. ժր. 36։ Եփես. ե. 8։ ա Թես. ե. 5։
բ Դան. դ. 27։ Մատ. զ. 19։ ժթ. 21։ Ղկ. ժա. 41։ ա Տիմ. զ. 17. 18. 19։
* Կամ կարօտութեան ժամանակնիդ
գ Մատ. իե. 21։ Ղկ. ժթ. 27։
դ Մատ. զ. 24։
† Կամ մէկուն պիտի յարի
ե Մատ. իգ. 14։
զ Ղկ. ժ. 29։
է Սաղ. է. 9։
ը Թագ. ժզ. 7։
թ Մատ. դ. 17։ ժա. 12. 13։ Ղկ. է. 29։
ժ Սաղ. ճբ. 26. 27։ Եսա. խ. 8։ ծա. 6։ Մատ. ե. 18։ ա Պետ. ա. 25։
ի Մատ. ե. 32։ ժթ. 9։ Մար. ժ. 11։ ա Կոր. է. 10. 11։

ունիս . և անիկայ ըսաւ . Հարիւր
քոռ ցորեն . ու ըսաւ անոր . Գիրդ
8 առ՝ և ութսուն գրէ ։ Ու տէրը
անիրաւ տնտեսը գովեց , որ խելա-
ցութիւնով ըրաւ . վասն զի աս
աշխարհիս որդիքը իրենց ցեղին
մէջ՝ ա լուսոյ որդիներէն աւելի խե-
9 լացի են ։ Եւ ես ալ ձեզի կ'ըսեմ .
բ Անիրաւ մամոնայէն ձեզի բարե-
կամներ ըրէք , որ *երբ անիկայ
պակսի", ձեզ յաւիտենական բնա-
10 կարաններու մէջ ընդունին ։ գ Ան
որ քիչ բանի մէջ հաւատարիմ
է , շատի մէջ ալ հաւատարիմ է .
և ան որ քիչի մէջ անիրաւ է , շա-
11 տի մէջ ալ անիրաւ է ։ Ուստի թէ
որ անիրաւ մամոնային մէջ հաւա-
տարիմ չեղաք , ճշմարիտ հարստու-
թիւնը ո՛վ պիտի հաւատայ ձեզի ։
12 Ու թէ որ օտարին բանին մէջ հա-
ւատարիմ չեղաք , ձերը ո՛վ պիտի
տայ ձեզի ։
13 դ Մէկ ծառայ մը չկրնար երկու
տէրերու ծառայութիւն ընել .
ինչու որ կամ մէկը պիտի ատէ և
միւսը սիրէ , կամ † մէկը պիտի
մեծարէ" և միւսը արհամարհէ .
չէք կրնար ծառայել Աստուծոյ ու
մամոնայի ։
14 Եւ փարիսեցիներն ալ ե որ ար-
ծաթասէր էին , աս ամէն բաները
լսելով կը քամահրէին զանիկայ ։
15 Եւ ըսաւ անոնց . Դուք էք որ
մարդոց առջեւ զ ինքզինքնիդ կ'ար-
դարացընէք . է բայց Աստուած գի-
տէ ձեր սիրտերը . ինչու որ ը մար-
դոց մէջ բարձր եղածը՝ Աստուծոյ
16 առջեւը պիղծ է ։ թ Օրէնքը ու
մարգարէները մինչև Յովհաննէս
էին . անկէ ետև Աստուծոյ թագա-
ւորութիւնը կը քարոզուի , և ա-
մէն մէկը անոր մէջը մտնելու կ'ար-
17 տորայ ։ ժ Դիւրին է որ երկինքը
ու երկիրը անցնի , քան թէ օրէն-
քէն մէկ նշանագիր մը իյնայ ։
18 ի Ո՛վ որ իր կնիկը արձակէ՝ և ուրիշ
մը առնէ , շնութիւն կ'ընէ . և ո՛վ
որ էրիկէ արձակուած կնիկ մը առ-
նէ՝ շնութիւն կ'ընէ ։
19 Մէկ հարուստ մարդ մը կար ,
որ ծիրանի ու բեհեզ կը հագնէր ,
և ամէն օր փառաւորապէս ուրա-
20 խութիւն կ'ընէր ։ Ու Ղազարոս
անունով աղքատ մը կար վէրքե-
րով լեցուն , որ անոր դրանը առ-
21 ջեւն դրուած էր . Եւ կը փափաքէր
որ ան հարուստին սեղանէն ինկած
փշրանքներէն իր փորը լեցընէ . նաև
շուներն ալ կու գային՝ և անոր
22 վէրքերը կը լզէին ։ Ու եղաւ որ
ան աղքատը մեռաւ , ու հրեշտակ-
ները Աբրահամին գոգը տարին զա-
նիկայ . հարուստն ալ մեռաւ ու
23 թաղուեցաւ ։ Եւ դժոխքին մէջը
երբոր տանջանքի մէջ էր , իր աչ-
քերը վերցընելով հեռուէն տեսաւ
Աբրահամը , ու Ղազարոսը անոր
24 գոգը հանգչած նստած ։ Եւ ինքը
աղաղակեց ու ըսաւ . Հայր Աբրա-
համ՝ ողորմէ՝ ինծի , ու ղրկէ՝ Ղա-
զարոսը , որ իր մատին ծայրը ջուրը
թաթխէ , ու զովացընէ իմ լե-
զուս . ինչու որ լ աս բոցին մէջ կը
25 տանջուիմ ։ Եւ Աբրահամ ը-
սաւ . Որդեա՛կ՝ ծ միտքդ բեր , որ
դուն քու կեանքիդ ատենը քու
բարիքներդ առիր . նոյնպէս ալ
Ղազարոս՝ չարիքներ . հիմա անի-
կայ հոս կը մխիթարուի , ու դուն
26 կը տանջուիս ։ Եւ աս ամէն բա-
ներէն 'ի զատ՝ մեր ու ձեր մէջտեղը
մեծ անդունդ մը կայ հաստա-
տուած . անանկ որ ասկէ ձեզի անց-
նիլ ուզողները չկրնան , ոչ ալ
ատկէ մեզի գալ ուզողները անցնին ։
27 Ան ալ ըսաւ . Ուրեմն կ'աղաչեմ
քեզի՝ հայր , որ անիկայ իմ հօրս
28 տունը ղրկես . քանզի հինգ եղբայր
ունիմ . որ երթայ անոնց վկայու-
թիւն տայ , որ չըլլայ թէ անոնք
ալ աս չարչարանքին տեղը գան ։
29 Եւ Աբրահամ ըսաւ անոր . կ Անոնք
Մովսէսը ու մարգարէները ունին ,
30 թող անոնց մտիկ ընեն ։ Ան ալ
ըսաւ . Չէ՛ հայր Աբրահամ , հա-
պա թէ որ մեռելներէն մէկը անոնց
31 երթայ , պիտի ապաշխարեն ։ Եւ
անիկայ ըսաւ անոր . Թէ որ Մով-
սէսին ու մարգարէներուն մտիկ
չեն ըներ , հ ոչ ալ թէ որ մեռել-
ներէն մէկը յարութիւն առնելու
ըլլայ , պիտի համոզուին ։

## ԳԼ. ԺԷ

*1 Քրիստոս կը սորվեցընէ գայթակղութիւն չը-
տալ , 3 և իրարու յանցանքները ներել ։
6 Հաւատքին զօրութիւնը ։ 7 Մենք պար-
տաւոր ենք Աստուծոյ . բայց Աստուած պար-
տաւոր չէ մեզի ։ 11 Քրիստոս կը բժշկէ տա-
սը բորոտներ ։ 22 Աստուծոյ թագաւորու-
թիւնը և Որդւոյ մարդոյ գալուստը ։*

1 Եւ ըսաւ իր աշակերտներուն .
ա Անկարելի է որ գայթակղու-
թիւններ չգան . բայց վա՜յ անոր ,
2 որուն ձեռքովը կու գան ։ Անոր
աւելի աղէկ է , որ անոր պարանո-
ցէն իշու աղացքի քար մը կախուի ,
ու անիկայ ծովը ձգուի , քան թէ
աս պզտիկներէն մէկը գայթակղե-
3 ցընէ ։ Զգուշացէ՛ք ձեր անձերուն ։
բ Թէ որ քու եղբայրդ քեզի դէմ
մեղանչէ , գ յանդիմանէ՛ զանիկայ .
ու թէ որ ապաշխարէ , ներէ՛ ա-
4 նոր ։ Եւ թէ որ օրը եօթը ան-
գամ քեզի դէմ մեղանչէ՝ ու օրը
եօթը անգամ դառնայ քեզի ու
ըսէ , Կ'ապաշխարեմ , ներես անոր ։

Յամ Տեառն 33

լ Զաք. ժդ. 12։
խ Եզ. կզ. 24։ Մար. թ. 43, 44։
ծ Յոբ. իա. 13։ Ղկ. զ. 24։
կ Եսա. ը. 20։ ԺԴ. 16։ Յոհ. ե. 39, 45։ Գոր. ժե. 21։ ժէ. 11։
հ Յոհ. ժբ. 10, 11։
ա Մատ. ժր. 6, 7։ Մար. թ. 41։ ա Կոր. ժա. 19։
բ Մատ. ժր. 15. 21։
գ Ղև. ժթ. 17։ Առակ. ժէ. 10։ Յակ. ե. 19։

5 Եւ առաքեալները ըսին Տէրոջը.
6 Մեր հաւատքը աւելցուր։ Եւ Տէրը ըսաւ. Թէ որ մանանեխի հատի չափ հաւատք ունենայիք, աս թըթենիին կրնայիք ըսել. Արմատահի խլուէ ու ծովուն մէջ տնկուէ, ան ալ պիտի հնազանդէր ձեզի։
7 Բայց ձեզմէ ով է որ ծառայ մը ունենայ մէկ երկրագործ կամ հովիւ ծառայ մը, որ անիկայ երբոր արտէն տուն մտնէ, շուտով զըրուցէ անոր թէ, Անցիր սեղան
8 նստէ. Հապա չըսե՞ր անոր թէ՝ Պատրաստէ իմ ընթրիքս, ու գօտիդ կապած ինծի սպասաւորութիւն ըրէ, մինչև որ ես ուտեմ ու խմեմ. ու ետքը դուն ալ կեր ու
9 խմէ։ Միթէ շնորհակալ կ'ըլլայ ան ծառային, իրեն հրամայուած բաները կատարելուն համար.
10 չեմ կարծեր։ Նոյնպէս ալ դուք երբոր բոլոր ձեզի հրամայուած բաները ընէք, ըսէք թէ՝ Մենք անպիտան ծառաներ ենք. քանզի ան որ պարտական էինք ընելու, ըրինք։
11 Ու եղաւ որ երբ ինքը Երուսաղէմ կ'երթար, Սամարիայի և Գա-
12 լիլեայի մէջտեղէն կ'անցնէր։ Ու երբոր մէկ գեղ մը պիտի մտնէր, տասը բորոտ մարդիկ հանդիպեցան անոր, որոնք հեռուն կայնեցան,
13 Եւ ձայներնին վերցուցին ու ըսին. Յիսուս վարդապետ, ողորմէ՛ մեզի։
14 Եւ տեսնելով՝ անոնց ըսաւ. Գացէք դուք ձեզ քահանաներուն ցուցուցէք. ու եղաւ որ երբ կ'եր-
15 թային, մաքրուեցան։ Եւ անոնցմէ մէկը երբոր տեսաւ թէ բժշկուեցաւ, ետ դարձաւ ու մեծ ձայնով փառք կուտար Աստուծոյ.
16 Ու երեսի վրայ անոր ոտքը իյնալով՝ շնորհակալ կ'ըլլար անոր. և
17 ինքը Սամարացի էր։ Պատասխան տուաւ Յիսուս ու ըսաւ. Չէ՞ որ տասն ալ մաքրուեցան. իսկ ան
18 ինը ո՞ւր են. Աս օտարազգիէն 'ի զատ ուրիշներ չգտնուեցան՝ որ դառնալով Աստուծոյ փառք տան։
19 Եւ ըսաւ անոր. Ելիր գնա. քու հաւատքդ քեզ բժշկեց։
20 Ու երբոր փարիսեցիները իրեն հարցուցին թէ Աստուծոյ թագաւորութիւնը ե՞րբ պիտի գայ, պատասխան տուաւ անոնց՝ ու ըսաւ. Աստուծոյ թագաւորութիւնը դիտելու երևցած բաներով չգար.
21 Ու պիտի չըսեն թէ՝ Ահա հոս է կամ ահա հոն. ինչու որ ահա Աստուծոյ թագաւորութիւնը ձեր ներսի դին է։
22 Աշակերտներուն ալ ըսաւ. Օրեր պիտի գան որ դուք Որդւոյ մարդոյ օրերուն մէկը տեսնելու պիտի փափաքիք, ու պիտի չտեսնէք։
23 Եւ թէ որ ըսեն ձեզի, թէ ահա հոս է կամ ահա հոն, մի՛ երթաք, ու
24 անոնց մի՛ հետևիք։ Վասն զի ինչպէս որ փայլակը երկինքին տակը մէկ դիէն փայլատակելով՝ մինչև երկինքին տակը մէկալ դին լոյս կուտայ, նոյնպէս ալ պիտի ըլլայ Որդին մարդոյ իր գալուն օրը։
25 Միայն թէ պէտք է որ ինքը առաջ շատ չարչարանքներ կրէ, ու մեր-
26 ժուի աս ազգէն։ Եւ ինչպէս որ Նոյի օրերը եղաւ, անանկ պիտի ըլ-
27 լայ Որդւոյ մարդոյ օրերն ալ։ Կ'ուտէին կը խմէին կնիկ կ'առնէին, էրկան կը տրուէին, մինչև ան օրը՝ որ Նոյ տապանը մտաւ, և ջրհեղեղը եկաւ՝ ու ամէնը կորսնցուց։
28 Նմանապէս՝ ինչպէս որ Ղովտին օրերը եղաւ, կ'ուտէին կը խմէին ծախու կ'առնէին՝ կը ծախէին՝ կը
29 տնկէին՝ կը շինէին. Բայց ան օրը որ Ղովտ Սոդոմէն ելաւ, երկինքէն կրակ ու ծծումբ տեղաց, և բոլորն
30 ալ կորսնցուց. Նոյնպէս պիտի ըլլայ ան օրը՝ որուն մէջ Որդին
31 մարդոյ պիտի յայտնուի։ Ան օրը՝ ան որ տանիքին վրայ է՝ և իր կարասիները տանը մէջ, թող վար չիջնէ զանոնք առնելու. և ան որ արտին մէջն է՝ նոյնպէս թող ետ
32 չդառնայ։ Միտքերնիդ բերէք
33 Ղովտին կնիկը։ Ով որ իր կեանքը կ'ուզէ ապրեցնել, պիտի կորսնցընէ զանիկայ. և ով որ կը կորսնցընէ, պիտի ապրեցնէ զանի-
34 կայ։ Ձեզի կ'ըսեմ. Ան գիշերը թէ որ երկու հոգի մէկ անկողինի մէջ ըլլան, մէկը պիտի առնուի՝
35 ու մէկալը ձգուի. Եւ թէ որ երկու կնիկ մէկտեղ աղալու ըլլան, մէկը պիտի առնուի՝ ու մէկալը ձգուի.
Եւ թէ որ երկու հոգի արտի մը մէջ ըլլան, մէկը պիտի առնուի՝ ու
36 մէկալը ձգուի։ Եւ պատասխան տալով ըսին անոր. Տէ՛ր ո՞ւր տեղ
37 պիտի ըլլայ աս բանը։ Ան ալ ըսաւ անոնց. Ո՛ւր որ մարմին կայ, հոն պիտի ժողվուին արծիւները։

ԳԼ. ԺԸ

1 Թախանձող որբևայրին. 9 փարիսեցին և մաքսաւորին առակը։ 15 Մանր տղայք Քրիստոսի կը բերուին։ 18 Մէկ իշխան մը կ'ուզէ Քրիստոսի հետևիլ, բայց իր հարստութիւնները արգելք կ'ըլլան։ 28 Քրիստոսի համար ամէն բան թող տուողներուն վարձքը։ 31 Քրիստոս կը նախաձայնէ իր մահը, 35 և կոյրին աչքերը կը բանայ։

1 Անոնց առակ մըն ալ ըսաւ աս բանիս վրայով՝ թէ պէտք է ամէն ատեն աղօթք ընել ու չձանձ-
2 րանալ. Ըսաւ. Մէկ դատաւոր

[cross-references]

Ցամ. Տեառն 33

մը կար քաղաքի մը մէջ , որ Աս–
տուծմէ չէր վախնար ու մարդէ չէր
3 ամչնար ։ Եւ նոյն քաղաքին մէջ
որբեւարի մը կար , որ անոր կու–
գար ու կ'ըսէր . Իրաւունք ըրէ
ինծի՝ [illegible] իմ ոսոխէս ։
4 Եւ անիկայ ժամանակ մը չէր ուզեր
անոր մտիկ ընել . բայց ետքը ըսաւ
իր մտքին մէջ . Թէև Աստուծմէ
չեմ վախնար , ու մարդէ չեմ ամչ–
5 նար , [ե] Գոնէ աս որբեւարիին զիս
ձանձրացընելուն համար իրեն իրա–
ւունք ընեմ , որ չգայ ամէն ատեն
6 զիս թախանձէ ։ Եւ Տէրը ըսաւ .
Լսեցէք՝ անիրաւ դատաւորը ինչ
7 կ'ըսէ ։ [զ] Հապա Աստուած իր ընտ–
րեալներուն իրաւունք պիտի չընէ՞ ,
որոնք ցորեկ ու գիշեր իրեն կ'աղա–
ղակեն , թէև երկայնամիտ ալ ըլ–
8 լայ անոնց վրայ ։ Ձեզի կ'ըսեմ ,
[է] որ շուտով անոնց իրաւունք պի–
տի ընէ . բայց Որդին մարդոյ եր–
բոր գայ , արդեօք հաւատք պիտի
գտնէ՞ երկրի վրայ ։
9 Եւ մէկ քանիներուն՝ [ը] որոնք ի–
րենց անձերուն վրայ կը վստահա–
նային թէ արդար են , և ուրիշները
կ'անարգէին , աս առակը ըսաւ .
10 Երկու մարդ ելան տաճարը աղօթք
ընելու . մէկը փարիսեցի ու մէկալը
11 մաքսաւոր ։ [թ] Փարիսեցին կայներ
էր , ու առանձին այսպէս աղօթք
կ'ընէր . [ժ] Ով Աստուած՝ շնորհակալ
եմ քեզմէ , որ ուրիշ մարդոց պէս
չեմ , յափշտակող՝ անիրաւ՝ շնա–
ցող , և կամ աս մաքսաւորին
12 պէս . [illegible] շաբաթը երկու ան–
գամ ծոմ կը պահեմ , ու բոլոր
ստացուածքիս տասանորդը կու–
13 տամ ։ Եւ մաքսաւորը հեռուն
կայներ էր , ու չէր ուզեր աչքն ալ
երկինքը վերցընել . հապա իր
կուրծքը ծեծելով՝ կ'ըսէր . Աս–
տուած՝ ողորմէ՛ ինծի մեղաւորիս ։
14 Ձեզի կ'ըսեմ՝ թէ ասիկայ ան մէ–
կալէն աւելի արդարացած իր տու–
նը իջաւ . [ժա] Վասն զի ով որ իր անձը
կը բարձրացընէ , պիտի խոնարհի .
և ով որ իր անձը կը խոնարհեցընէ ,
պիտի բարձրանայ ։
15 [ժբ] Մանր տղաքներ ալ բերին իրեն ,
որ անոնց դպչի . ու աշակերտնե–
րը տեսնելով՝ կը յանդիմանէին
16 զանոնք ։ Բայց Յիսուս անոնք
իրեն կանչելով՝ ըսաւ . Թո՛ղ
տուէք մանր տղոցը որ ինծի
գան , և մի՛ արգիլէք ատոնք . [ժգ] ին–
չու որ Աստուծոյ թագաւորու–
17 թիւնը ատանկներունն է ։ [ժդ] Ճշմա–
րիտ կ'ըսեմ ձեզի . Ո՛վ որ Աս–
տուծոյ թագաւորութիւնը պզտիկ
տղու մը պէս չընդունի , բնաւ պի–
տի չմտնէ անոր մէջը ։

[ե] Ղւ. ժա. 8։
[զ] Յայտ. զ. 10։
[է] Եբր. ժ. 37։ բ Պետ. գ. 8, 9։
[ը] Ղւ. ժ. 29։ ժզ. 15։
[թ] Սաղ. ճլե. 2։
[ժ] Եսա. ա. 15։ ծը. 2։ Յայտ. գ. 17։
[ժա] Յոբ. իբ. 29։ Մատ. իգ. 12։ Ղւ. ժդ. 11։ Յակ. դ. 6։ ա Պետ. ե. 5, 6։
[ժբ] Մատ. ժթ. 13։ Մար. ժ. 13։
[ժգ] ա Կոր. ժդ. 20։ ա Պետ. բ. 2։
[ժդ] Մար. ժ. 15։

18 [ժե] Եւ մէկ իշխան մը հարցուց ա–
նոր ու ըսաւ . Բարի՛ վարդապետ՝
ի՞նչ գործ գործեմ որ յաւիտենա–
19 կան կեանքը ժառանգեմ ։ Եւ Յի–
սուս ըսաւ անոր . Ինչո՞ւ զիս բարի
կ'անուանես , մէկէն 'ի զատ բարի
20 չկայ , որ է Աստուած ։ Պատուի–
րանքները գիտես . [ժզ] Շնութիւն մի՛
ըներ , Սպանութիւն մի՛ ըներ ,
Գողութիւն մի՛ ըներ , Սուտ վկա–
յութիւն մի՛ ըներ , [ժէ] Քու հայրդ ու
21 մայրդ պատուէ՛ ։ Ան ալ ըսաւ .
Ատոնք ամէնը մանկութենէս 'ի վեր
22 պահեր եմ ։ Աս լսելով Յիսուս՝
ըսաւ անոր . Մէկ բան մըն ալ
պակաս է քեզի . [ժը] Քու բոլոր ունե–
ցածդ ծախէ , և աղքատներուն
բաշխէ , ու երկինքը գանձ պիտի
ունենաս , և եկուր իմ ետևէս ։
23 Անիկայ երբոր աս բանը լսեց՝
տրտմեցաւ , ինչու որ շատ հարուստ
24 էր ։ Եւ Յիսուս երբոր անիկայ
տրտմած տեսաւ , ըսաւ . [ժթ] Որչափ
դժուար է անոնց՝ որ հարստութիւն
ունին , Աստուծոյ թագաւորու
25 թիւնը մտնել ։ Քանզի դիւրին
է որ ուղտը ասեղին ծակէն անցնի ,
քան թէ հարուստը Աստուծոյ թա–
26 գաւորութիւնը մտնէ ։ Եւ անոնք
որ լսեցին , կ'ըսէին . Ալ ո՞վ կրը–
27 նայ փրկուիլ ։ Եւ ինքը ըսաւ .
[ի] Մարդոց կողմանէ անկարելի եղած
բաները՝ Աստուծոյ կողմանէ կարելի
28 են ։ [իա] Ու Պետրոս ըսաւ . Ահա մենք
ամէն բան թողուցինք՝ և քու ե–
29 տևէդ եկանք ։ Ու անիկայ ըսաւ
անոնց . Ճշմարիտ կ'ըսեմ ձեզի ,
[իբ] թէ մարդ մը չկայ՝ որ թողուց
տուն , կամ ծնողք , կամ եղբայր–
ներ , կամ կին , կամ որդիներ՝
Աստուծոյ թագաւորութեանը հա–
30 մար , [իգ] Որ պիտի չառնէ բազմա–
պատիկ աս ատենիս մէջ , և գա–
լու աշխարհին մէջ յաւիտենական
կեանքը ։
31 [իդ] Եւ տասներկուքը իր քովը առ–
նելով՝ ըսաւ անոնց . Ահա մենք Ե–
րուսաղէմ կ'ելլենք , [իե] և մարգարէ–
ներուն ձեռքովը Որդւոյ մարդոյ
համար բոլոր գրուածները պիտի
32 կատարուին ։ [իզ] Ինչու որ հեթա–
նոսներուն պիտի մատնուի , ու
ծաղր պիտի ըլլայ , և պիտի նախա–
տուի , ու պիտի թքնեն անոր ,
33 Եւ պիտի ծեծեն ու սպաննեն անի–
կայ , ու երրորդ օրը յարութիւն
34 պիտի առնէ ։ [իէ] Բայց անոնք աս
բաներէն մէկն ալ չհասկըցան . ու
աս խօսքը անոնցմէ ծածկուած էր ,
և ըսած բաները չէին իմանար ։
35 [իը] Ու եղաւ որ երբ ինքը Երիքովին
կը մօտենար , կոյր մը ճամբուն
36 քովը նստեր էր մուրալու ։ Երբոր

Ցամ. Տեառն 33

[ժե] Մատ. ժթ. 16։ Մար. ժ. 17։
[ժզ] Ել. ի. 12։ 16։ բ Օր. ե. 16—20։ Հռով. ժգ. 9։
[ժէ] Եփե. զ. 2։ Կող. գ. 20։
[ժը] Մատ. զ. 19, 20։ ժթ. 21։ ա Տիմ. զ. 19։
[ժթ] Առակ. ժա. 28։ Մատ. ժթ. 23։ Մար. ժ. 23։
[ի] Երեմ. լբ. 17։ Զաք. ը. 6։ Մատ. ժթ. 26։ Ղւ. ա. 37։
[իա] Մատ. ժթ. 27։
[իբ] Օր. լգ. 9։
[իգ] Յոբ. խբ. 10։
[իդ] Մատ. ժզ. 21։ ժէ. 21։ ի. 17։ Մար. ժ. 32։
[իե] Սաղ. իբ։ Եսա. ծգ։
[իզ] Մատ. իէ. 2։ Ղւ. իգ. 1։ Յովհ. ժը. 28։ Գործ. գ. 13։
[իէ] Մար. թ. 31։ Ղւ. բ. 50։ թ. 45։ Յովհ. ժ. 6։ ժբ. 16։
[իը] Մատ. ի. 29։ Մար. ժ. 46։

Ցամփ Տեառն 33

լսեց բազմութեանը անցնիլը, հար-
37 ցուց թէ ի՞նչ է ան ։ Եւ իրեն
ըսին թէ՝ Յիսուս Նազովրեցին
38 կ'անցնի ։ Ուստի աղաղակեց՝ ու
ըսաւ. Յիսուս՝ որդի Դաւթի՛
39 ողորմէ՛ ինծի ։ Եւ անոնք որ
առջևէն կ'երթային, կը յանդի-
մանէին զանիկայ, որ լռէ. բայց
անիկայ՝ ալ աւելի կ'աղաղակէր ;
40 Որդի Դաւթի՛ ողորմէ՛ ինծի ։ Եւ
Յիսուս կանգ առնելով՝ հրաման
ըրաւ որ զանիկայ իրեն բերեն, ու
երբոր անիկայ մօտեցաւ, հարցուց
41 անոր ու ըսաւ. Ի՞նչ կ'ուզես որ
քեզի ընեմ. անիկայ ալ ըսաւ.
42 Տէ՛ր՝ որ աչքերս բացուին ։ Եւ
Յիսուս ըսաւ անոր. Թող բա-
ցուին. Քու հաւատքդ քեզ բը-
43 ժըշկեց ։ Եւ իսկոյն անոր աչքերը
բացուեցան, ու անոր ետևէն կ'եր-
թար՝ և փառք կու տար Աստու-
ծոյ. բոլոր ժողովուրդն ալ տես-
նելով՝ զԱստուած կը գովաբանէին ։

ղ Գլ. ժէ. 19 ։
ե Գլ. ե. 26 ։ Գոր. դ. 21 ։ ժա. 18 ։

## ԳԼ. ԺԹ

1 Զաքէոս մաքսապետը ։ 11 Տասը մնասին առակը ։ 28 Քրիստոս իշու վրայ հեծած՝ փառաւոր հանդէսով Երուսաղէմ կը մտնէ. 41 քաղաքին վրայ կ'ողբայ. 45 տաճարէն դուրս կը հանէ գնողները և վաճառողները. 47 ամէն օր տաճարին մէջ կը սորվեցընէ. իսկ Հրէից գլխաւորները կ'ուզեն կորսընցընել զանիկայ, բայց ժողովուրդէն կը վախնան ։

1 Եւ մտնելով Երիքովի մէջէն կ'անց-
2 նէր ։ Եւ ահա մարդ մը կար,
անունը Զաքէոս ըսուած, որ մաք-
սապետ էր՝ ու հարուստ մէկ մըն
3 էր ։ Եւ կ'ուզէր տեսնել՝ թէ ո՛վ
է Յիսուսը, ու բազմութենէն չէր
կրնար, ինչու որ հասակով կարճ
4 էր ։ Եւ առաջ վազեց ու ժան-
տաթզենիի մը վրայ ելաւ, որ զա-
նիկայ տեսնէ. ինչու որ անկէ պի-
5 տի անցնէր ։ Ու երբոր Յիսուս ան
տեղը եկաւ, վեր նայելով զանիկայ
տեսաւ, ու ըսաւ անոր. Զաքէոս՝
շուտ ըրէ, աշկէ վար իջիր, ինչու
որ պէտք է ինծի այսօր քու տունդ
6 կենալ ։ Եւ արտորալով վար ի-
ջաւ, և ուրախութեամբ ընդունեց
7 զանիկայ ։ Երբոր ամէնն ալ տե-
սան, կը տրտնջէին ու կ'ըսէին
—թէ՝ Մեղաւոր մարդու քով մտաւ
8 իջևան ընելու ։ Եւ Զաքէոս կայ-
նեցաւ՝ ու ըսաւ Տէրոջը. Տէ՛ր՝ ա-
հա իմ ունեցածիս կէսը աղքատ-
ներուն կու տամ. Եւ թէ որ զըր-
պարտութեամբ մէկու մը զրկանք
ըրած եմ, չորեքպատիկ կը հա-
9 տուցանեմ անոր ։ Եւ Յիսուս ը-
սաւ անոր. Այսօր աս տանը փրկու-
թիւն եղաւ. ինչու որ ասիկայ
10 ալ Աբրահամի որդի է ։ Վասն
զի Որդին մարդոյ եկաւ որ կոր-
սուածը փնտռէ ու փրկէ ։

— Մատ. թ. 11 ։ Գլ. ե. 30 ։
Բ Գլ. գ. 14 ։
Գ Ել. իբ. 1 ։ ա Թագ. ժբ. 3 ։ բ Թագ. ժբ. 6 ։
Դ Հռովմ. դ. 11, 12, 16 ։ Գաղ. գ. 7 ։
Ե Գլ. ժգ. 16 ։
Զ Մատ. ժը. 11 ։ Տես Մատ. ժ. 6 ։ ժե. 24 ։

11 Ու երբոր անոնք աս բաները կը
լսէին, առակ մըն ալ ըսաւ իր Ե-
րուսաղէմ մօտենալուն համար,
և անոնց անանկ կարծելուն հա-
մար՝ թէ շուտ մը Աստուծոյ թա-
գաւորութիւնը պիտի յայտնուի ։
12 Ուստի ըսաւ. Մէկ ազնուական
մարդ մը հեռու երկիր գնաց՝ իրեն
թագաւորութիւն առնելու և
13 դառնալու ։ Եւ իր տասը ծառա-
ները կանչելով՝ տասը մնաս տուաւ
անոնց, ու ըսաւ անոնց. Բանե-
ցուցէ՛ք ասոնք՝ մինչև որ ես գամ ։
14 Եւ անոր քաղաքացիները զանիկայ
կ'ատէին, ու դեսպաններ խրկեցին
անոր ետևէն, ըսելով թէ՝ Չենք
ուզեր որ ասիկայ մեր վրայ թա-
15 գաւորութիւն ընէ ։ Ու եղաւ որ
երբ անիկայ թագաւորութիւնը
առնելով ետ դարձաւ, իրեն կան-
չել տուաւ ան ծառաները՝ որոնց որ
ստակը տուեր էր, որ գիտնայ թէ
16 ով ինչ շահ ըրած է ։ Եւ առա-
ջինը եկաւ՝ ու ըսաւ. Տէ՛ր՝ քու
17 մնասդ տասը մնաս շահ ըրաւ ։ Եւ
ըսաւ անոր. Ապրի՛ս՝ բարի՛ ծա-
ռայ. որովհետև քիչ բանին մէջ
հաւատարիմ եղար, տասը քա-
ղաքի վրայ իշխանութիւն ունե-
18 ցիր ։ Ու երկրորդը եկաւ՝ ու ըսաւ.
Տէ՛ր՝ քու մնասդ հինգ մնաս շահ
19 ըրաւ ։ Եւ ըսաւ անոր. Դուն ալ
20 հինգ քաղաքի վրայ եղիր ։ Եւ ու-
րիշ մը եկաւ՝ ու ըսաւ. Տէ՛ր՝ ահա
քու մնասդ՝ որ թաշկինակի մէջ
21 ծրարած կը պահէի. Քանզի կը
վախնայի քեզմէ, ինչու որ դուն
խիստ մարդ մըն ես. չդրած բանդ
կը վերցընես, ու չսերմանածդ կը
22 հնձես ։ Եւ անիկայ ըսաւ անոր.
Քու բերնէդ քեզ պիտի դատեմ՝
ո՛վ չար ծառայ. Կը գիտէիր որ ես
խիստ մարդ մըն եմ. չդրած բանս
կը վերցընեմ, ու չսերմանածս կը
23 հնձեմ. Եւ ինչո՞ւ համար իմ ըս-
տակս սեղանաւորներուն չտուիր,
որ ես եկած ատենս շահովը առնէի
24 անիկայ ։ Եւ հոն կայնողներուն
ըսաւ. Առէ՛ք ատկէ մնասը, ու
տուէ՛ք անոր՝ որ տասը մնաս ունի.
25 ( Եւ ըսին իրեն. Տէ՛ր՝ անիկայ
26 տասը մնաս ունի. ) Քանզի կ'ը-
սեմ ձեզի, թէ ամէն ունեցողին
պիտի տրուի, և չունեցողին՝ ունե-
ցածն ալ անկէ պիտի առնուի ։
27 Բայց ան իմ թշնամիներս՝ որոնք
չէին ուզեր որ իրենց վրայ թագա-
ւոր ըլլամ, հոս բերէք, ու իմ
28 առջևս սպաննեցէ՛ք ։ Եւ աս բա-
ները խօսելէն ետև, առաջ գնաց
Երուսաղէմ ելլելու ։
29 Ու եղաւ որ երբ Բեթփագէին
ու Բեթանիային մօտեցաւ, դէպ

Ցամփ Տեառն 33

Է Գոր. ա. 6 ։
Ը Մատ. իե. 14 ։ Մար. ժգ. 34 ։
Թ Յօհ. ա. 11 ։
Ժ Մատ. իե. 21 ։ Գլ. ժզ. 10 ։
Ի Մատ. իե. 24 ։
Լ Բ Թագ. ա. 16 ։ Յոբ. ժե. 6 ։ Մատ. ժբ. 37 ։
Խ Մատ. իե. 26 ։
Ծ Մատ. ժգ. 12 ։ իե. 29 ։ Մար. դ. 25 ։ Գլ. ը. 18 ։
Կ Մար. ժ. 32 ։
Հ Մատ. իա. 1 ։ Մար. ժա. 1 ։

Ցամ. Տեառն 33

'ի ան լեռը՝ որ Ձիթենեաց կը կ'ը-
սուի , իր աշակերտներէն երկուքը
30 խրկեց , Եւ ըսաւ . Գացէ՛ք դէպ դի-
մացը եղած գեղը . և անոր մէջ
մտնելնուդ պէս՝ պիտի գտնէք
կապուած աւանակ մը , որուն վրայ
բնաւ մարդ մը նստած չէ . արձը-
31 կեցէ՛ք անիկայ՝ ու բերէ՛ք . Եւ թէ
որ մէկը ձեզի հարցընէ թէ՝ Ինչո՞ւ
կ'արձըկէք . ասանկ ըսէք անոր թէ ,
32 Տէրոջը պէտք է ։ Երբոր գացին ա-
նոնք որ խրկուեցան , ինչպէս որ
33 իրենց զրուցեր էր՝ գտան ։ Ու
երբոր աւանակը կ'արձըկէին , անոր
տէրերը ըսին անոնց . Ինչո՞ւ կ'ար-
34 ձըկէք ատ աւանակը ։ Անոնք ալ
35 ըսին . Տէրոջը պէտք է . Եւ զա-
նիկայ Յիսուսին բերին . Յու իրենց
հանդերձները աւանակին վրայ
36 ձգելով՝ Յիսուսը հեծուցին ։ Ու
երբոր կ'երթար , իրենց հանդերձ-
37 ները ճամբուն վրայ կը փռէին ։ Ու
երբոր ալ մօտեցաւ , և Ձիթե-
նեաց լեռանը զառ 'ի վայրէն կ'իջ-
նէր , աշակերտներուն բոլոր բազ-
մութիւնը սկսաւ ուրախութեամբ
զԱստուած օրհնել բարձր ձայնով
ան բոլոր հրաշքներուն համար՝ որ
38 տեսեր էին . Ու կ'ըսէին . Օրհնեալ
է տը թագաւորը որ Տէրոջը ա-
նունովը կու գայ . Երկինքի մէջ
խաղաղութիւն , ու փառք՝ բարձ-
39 րութեան մէջ ։ Եւ բազմութեա-
նը մէջէն փարիսեցիներուն մէկ քա-
նիները ըսին անոր . Վարդապետ՝
տը քու աշակերտներդ յանդիմա-
40 նէ ։ Եւ անիկայ պատասխան
տուաւ ու ըսաւ անոնց . Ձեզի կ'ը-
սեմ , թէ որ ատոնք լուռ կենան ,
քարերը պիտի աղաղակեն ։
41 Ու երբոր մօտեցաւ , քաղաքը
տեսնելով՝ լացաւ անոր վրայ՝ և ը-
42 սաւ . Գոնէ աս քու օրուանդ մէջ
գիտնայիր քու խաղաղութիւնդ .
բայց հիմա ծածկուեցաւ քու աչ-
43 քերէդ ։ Ինչու որ օրեր պիտի
գան քու վրադ , նոր թշնամիներդ
քու բոլորտիքդ պատնէշ պիտի շի-
նեն , ու քեզ պիտի պաշարեն ,
և ամէն կողմէ քեզ նեղը պիտի
44 ձգեն . Եւ հիմնայատակ պիտի ը-
նեն քեզ՝ ու քու մէջդ եղած զա-
ւակներդ . Ու քար մը քարի վրայ
ամենևին պիտի չթողուն քու մէջդ .
Անոր համար որ չճանչցար քու
այցելութեան ժամանակդ ։
45 Եւ տաճարը մտնելով՝ սկսաւ
դուրս հանել անոր մէջ ծախող-
46 ները և գնողները . Եւ ըսաւ ա-
նոնց . Գրուած է թէ՝ Իմ տունս
աղօթքի տուն է ; բայց դուք ա-
տիկայ աւազակներու այր ըրիք ։
47 Եւ ամէն օր տաճարին մէջ կը
սորվեցընէր . Բայց քահանայա-
պետները ու դպիրները և ժողովուր-
դին գլխաւորները կը փնտռէին
թէ ինչպէս կորսընցընեն զանիկայ ,
48 Ու բան մը չէին կրնար գտնել՝ թէ
ինչ ընեն . ինչու որ բոլոր ժողո-
վուրդը անոր կապուեր էին մտիկ
ընելու ։

Յր Թագ. Թ. 13 ։ Մատ. իա. 7 ։ Մար. ժա. 7 ։ Յօհ. ժբ. 14 ։
Մատ. իա. 8 ։
Սաղ. ճժը. 26 ։ Գլ. ժգ. 35 ։
Գլ. բ. 14 ։ Եփե. բ. 14 ։
Ամբ. բ. 11 ։
Յօհ. ժա. 35 ։
Եսա. իթ. 3 ։ 4 ։ Երեմ. գ. 3 ։ 6 ։ Գլ. իա. 20 ։
Թագ. Թ. 7 ։ 8 ։ Միք. գ. 12 ։
Մատ. իդ. 2 ։ Մար. ժգ. 2 ։ Գլ. իա. 6 ։
Դան. Թ. 24 ։ Գլ. ա. 68 ։ 69 ։ ա Պետ. բ. 12 ։
Մատ. իա. 12 ։ Մար. ժա. 11 ։ 15 ։ Յօհ. բ. 14 ։ 15 ։
Եսա. ծզ. 7 ։
Երեմ. է. 11 ։
Մար. ժա. 18 ։ Յօհ. է. 19 ։ ը. 37 ։

## ԳԼ. Ի

1 Քրիստոս իր իշխանութեան իրաւունքը կը պաշտպանէ Յովհաննէսի մկրտութեան հարցումովը ։ 9 Այգիին առակը ։ 25 Քրիստոսի պատասխանը կայսրին տուրք տալու վրայով ։ 27 Յարութիւն չկայ ըսող սադուկեցիները կը պապանձեցընէ ։ 41 Քրիստոս ինչպէս Դաւիթի որդին կ'ըլլայ ։ 45 Իր աշակերտներուն կը պատուիրէ դպիրներէն զգոյշ կենալ ։

1 Ու եղաւ որ ան օրերուն մէկը՝
երբոր տաճարին մէջ ժողովուր-
դին կը սորվեցընէր , և աւետա-
րանը կը քարոզէր , քահանայա-
պետները ու դպիրները ծերերուն
2 հետ մէկտեղ վրայ հասան , Եւ
անոր խօսեցան՝ ըսելով . Զրուցէ՛
մեզի թէ ինչ իշխանութիւնով կ'ը-
նես ատ բաները , կամ ո՞վ է ատ
իշխանութիւնը քեզի տուողը ։
3 Պատասխան տուաւ ու ըսաւ ա-
նոնց . Ես ալ ձեզի բան մը հար-
4 ցընեմ , և ըսէ՛ք ինծի . Յովհան-
նէսին մկրտութիւնը երկինքէ՞ն էր՝
5 թէ մարդոցմէ ։ Եւ անոնք մէ-
6 ջերնին խորհեցան՝ ու ըսին . Թէ
որ ըսենք՝ Երկինքէն , պիտի ըսէ .
Հապա ինչո՞ւ չհաւատացիք անոր .
իսկ թէ որ ըսենք՝ Մարդոցմէ .
բոլոր ժողովուրդը մեզ պիտի քար-
կոծէն . Ինչու որ հաստատ համո-
զուած են թէ Յովհաննէս մարգա-
7 րէ էր ։ Եւ պատասխան տուին՝
8 թէ չեն գիտեր ուսկից էր ։ Եւ
Յիսուս ըսաւ անոնց . Ես ալ ձե-
զի չեմ ըսեր թէ ինչ իշխանու-
թիւնով կ'ընեմ աս բաները ։
9 Սկսաւ աս առակը զրուցել ժո-
ղովուրդին . Մէկ մարդ մը այգի
տնկեց , և զանիկայ մշակներու
յանձնեց . ու ինքը օտար երկիր
երթալով՝ շատ ժամանակ մնաց ։
10 Եւ ատենին ծառայ մը խրկեց մը-
շակներուն , որ այգիին պտուղէն
անոր տան . իսկ մշակները ծեծեցին
զանիկայ , ու պարապ ճամբեցին ։
11 Եւ ուրիշ ծառայ մըն ալ խրը-
կեց . իսկ անոնք զանիկայ ալ ծե-
ծեցին , անարգեցին ու պարապ
12 ճամբեցին ։ Ու երրորդ մըն ալ
խրկեց . իսկ անոնք զանիկայ ալ
վիրաւորեցին՝ ու դուրս հանեցին ։
13 Ան ատենը այգիին տէրը ըսաւ .
Ի՞նչ ընեմ . իմ սիրելի որդիս
խրկեմ , դուցէ զանիկայ տեսնելով
14 ամչնան ։ Բայց մշակները երբոր
տեսան զանիկայ , իրարու հետ

Ցամ. Տեառն 33

Մատ. իա. 23 ։
Գործ. դ. 7 ։ է. 27 ։
Մատ. ժդ. 5 ։ իա. 26 ։ Գլ. է. 29 ։
Մատ. իա. 33 ։ Մար. ժբ. 1 ։

Ցամ Տեառն
33

խորհուրդ ըրին՝ ըսելով. Ասիկայ
է ժառանգը, եկէք զանիկայ սպաննենք՝. որ ժառանգութիւնը
15 մերը ըլլայ։ Եւ զանիկայ այգիէն
դուրս հանեցին ու սպաննեցին.
ուստի այգիին տէրը ի՞նչ պիտի
16 ընէ անոնց. Պիտի գայ՝ ու կորսնցընէ ան մշակները, և այգին
ուրիշներու պիտի տայ։ Երբոր
ասոնք լսեցին, ըսին. Քաւ լիցի։
17 Եւ ինքը անոնց նայելով՝ ըսաւ.
Հապա ի՞նչ է աս գրուածը թէ,
ի Սաղ. ճժը. 22։ Մատ. իա. 42։
ԻԱն քարը՝ որ շինողները անարգեցին, անիկայ անկիւնին գլուխը ե-
18 ղաւ։ Ամէն ով որ ան քարին վրայ
ղ Դան. բ. 34, 35։ Մատ. իա. 44։
իյնայ՝ պիտի կոտրտի, Ղև որուն
վրայ որ իյնայ՝ պիտի փշրէ զա-
19 նիկայ։ Եւ քահանայապետները
ու դպիրները կը փնտռէին թէ ի՛նչպէս նոյն ժամուն ձեռք զարնեն ա-
նոր, բայց ժողովուրդէն վախցան.
քանզի իմացան որ ան առակը ի-
րենց համար ըսաւ։
է Մատ. իբ. 15։
20 Ու ետքը յարմար ատենի սպասե-
լով՝ խրկեցին քանի մը խաբեբայ
մարդիկ՝ որոնք կեղծաւորութեամբ
ինքզինքնին արդար կը ձեւացընէին,
որ անիկայ խօսքով բռնեն՝ տէրու-
թեան և կուսակալին իշխանու-
21 թեանը զանիկայ մատնելու։ Ու
ը Մատ. իբ. 16։ Մար. ժբ. 14։
անոր հարցուցին ըսելով. ԷՎար-
դապետ՝ գիտենք որ շիտակ կը խօ-
սիս ու կը սորվեցընես, և աչառու-
թիւն չես ըներ. հապա ճշմար-
տութեամբ Աստուծոյ ճամբան կը
22 սորվեցընես։ Մեզի արժա՞ն է
23 կայսրին տուրք տալ, թէ չէ։ Եւ
անոնց խորամանկութիւնը հասկը-
նալով՝ ըսաւ անոնց. Ինչո՞ւ զիս կը
24 փորձէք. Ցուցուցէք ինծի դահե-
կան մը։ Որո՞ւն պատկերը ու գիրը
ունի վրան։ Պատասխան տուին
25 ու ըսին. Կայսրինը։ Եւ ինքը
ըսաւ անոնց. Ուրեմն ան որ կայսրինն է՝ կայսրին տուէք, և ան որ
Աստուծոյն է՝ Աստուծոյ տուէք։
26 Եւ չկրցան անիկայ խօսքով մը
բռնել ժողովուրդին առջեւ. ու
զարմանալով անոր պատասխանին
վրայ՝ լուռ կեցան։
թ Մատ. իբ. 23։ Մար. ժբ. 18։
27 Եւ Սադուկեցիներէն ոմանք ե-
կան, (ծ որոնք հակառակութիւն
ժ Գործ. իգ. 6, 8։
կ'ընեն՝ թէ յարութիւն չկայ.) և
ժա Օր. իե. 5։
28 անոր հարցուցին՝ ըսելով. Վար-
դապետ՝ ԷՄովսէս մեզի գրեց. Թէ
որ մէկուն եղբայրը կնիկ ունենա-
լով՝ մեռնելու ըլլայ, ու մեռած
ատենը զաւակ չունենայ՝ անոր եղ-
բայրը առնէ ան կնիկը և իր եղբօ-
29 րը զաւակ հանէ։ Արդ եօթը եղ-
բայրներ կային. ու առջինը կնիկ
մը առնելով՝ զաւակ չունեցած մե-
30 ռաւ. Երկրորդն ալ առաւ ան

կնիկը, և ինքն ալ մեռաւ առանց
31 զաւակի։ Երրորդն ալ առաւ
զանիկայ. նմանապէս եօթն ալ,
ու զաւակ չձգեցին ու մեռան։
32 Ամենէն ետքը կնիկն ալ մեռաւ։
33 Ուրեմն յարութեան ատենը ա-
նոնցմէ որո՞ւն կնիկը պիտի ըլլայ.
ինչու որ եօթն ալ զանիկայ կնիկ
34 ունեցան։ Եւ Յիսուս պատասխան տալով՝ անոնց ըսաւ. Աս աշ-
խարհիս որդիքը կնիկ կ'առնեն ու
35 էրկան կը տրուին։ Բայց անոնք
որ արժանի պիտի ըլլան ան աշ-
խարհին հասնելու, ու մեռելներէն
յարութիւն առնելուն, ոչ կնիկ
կառնեն և ոչ էրկան կը տրուին.
36 Որովհետև ալ չեն կրնար մեռնիլ.
լա Կոր. ժե. 42, 49, 52։
Լքանզի հրեշտակներուն հաւասար
են, ու Աստուծոյ որդիք են, Իինչու
ա Յով. գ. 2։
37 որ յարութեան որդիք են։ Բայց
ի Հռով. ը. 23։
մեռելներուն յարութիւն առնելը
ծՄովսէսն ալ իմացուց մորենիին
ծ Ել. գ. 6։
պատմութեանը մէջ, երբոր կը կոչէ
Տէրը՝ Աբրահամին Աստուածը, ու
Իսահակին Աստուածը, և Յակո-
38 բին Աստուածը։ Ու Աստուած
մեռելներուն Աստուածը չէ, հապա
{ Հռով. զ. 10, 11։
կենդանիներուն. Կինչու որ ամէնը
39 անոր կենդանի են։ Եւ դպիրնե-
րէն մէկ քանին պատասխան տուին
ու ըսին. Վարդապետ՝ աղէկ ը-
40 սիր։ Ու ալ մէկը համարձակու-
թիւն չէր ըներ անոր բան մը հար-
ցընելու։
հ Մատ. իբ. 42։ Մար. ժբ. 35։
41 Եւ ըսաւ անոնց. հԻ՞նչպէս կ'ը-
սեն թէ՝ Քրիստոս Դաւիթի որ-
42 դին է. Եւ ինքը Դաւիթ Սաղ-
մոսներուն գրքին մէջը կ'ըսէ.
ձ Սաղ. ճժ. 1։ Գործ. բ. 34։
ձՏէրը իմ Տէրոջս ըսաւ. Նստէ
43 իմ աջ կողմս, Մինչև որ քու
թշնամիներդ ոտքերուդ պատուան-
44 դան ընեմ։ Ուրեմն Դաւիթ որ
զանիկայ Տէր կը կոչէ, ի՞նչպէս
անիկայ անոր որդին կ'ըլլայ։
ղ Մատ. իգ. 1։ Մար. ժբ. 38։
45 ՂԵւ բոլոր ժողովուրդին առջեւ
46 ըսաւ իր աշակերտներուն. ճԶգու-
ճ Մատ. իգ. 5։
գուշացէք դպիրներէն, որոնք կ'ու-
զեն փառաւոր հանդերձներով պը-
մ Գղ. ժա. 43։
տըտիլ, մև շուկաներուն մէջ բա-
րևներ կը սիրեն, ու ժողովարան-
ներուն մէջ առաջին աթոռները,
և ընթրիքներու մէջ առաջին բազ-
յ Մատ. իգ. 14։
47 մոցները. յՈրոնք որբևարիներուն
տուները կ'ուտեն, ու մարդոց երև-
նալու համար աղօթքը կ'երկընցը-
նեն. ասոնք աւելի դատապարտու-
թիւն պիտի ընդունին։

ԳԼ. ԻԱ

1 Քրիստոս կը գովէ աղքատ որբևարին. 5 կը նախաձայնէ տաճարին ու Երուսաղեմին կործանումը 25 նաև վերջին օրուան նշանները. 34 կը յորդորէ որ արթուն ըլլանք.

Յամի Տեառն 33

ա Մար. ժբ. 41։
բ Բ Կոր. ը. 12։
գ Մատ. իդ. 1. Մար. ժգ. 1։
դ Ղկ. ժթ. 44։
ե Մատ. իդ. 4, 5. Մար. ժգ. 5. Եփե. ե. 6. բ Թես. բ. 3։
զ Մատ. իգ. 7։
է Մար. ժգ. 9. Յայտ. բ. 10։
ը Գոր. դ. 3. ե. 18. ժբ. 4. ժզ. 24։
թ Ա Պետ. բ. 13։
ժ Գոր. իե. 23։
ժա Փիլ. ա. 28. բ Թես. ա. 5։
ժբ Մատ. ժ. 19. Մար. ժգ. 11. Ղկ. ժբ. 11։
ժգ Գոր. զ. 10։
ժդ Միք. է. 6. Մար. ժգ. 12։
ժե Գոր. է. 58. ժբ. 2։
ժզ Մատ. ժ. 22։
ժէ Մատ. ժ. 30։

1 Ու նայելով՝ տեսաւ հարուստնե-
րը որ իրենց ընծաները գանձա-
2 նակը կը ձգէին ։ Մէկ տնանկ որ-
բևարի մըն ալ տեսաւ , որ հոն եր-
3 կու լումայ ձգեց ։ Ու ըսաւ . Ճըշ-
մարիտ կ'ըսեմ ձեզի , որ աս աղ-
քատ որբևարին ամէնէն աւելի ձը-
4 գեց ։ Ինչու որ ամէն անոնք իրենց
աւելցածէն Աստուծոյ ընծաներուն
մէջը ձգեցին . բայց ասիկայ իր չը-
քաւորութենէն բոլոր իր ունեցած
ապրուստը ձգեց ։
5 Ու երբոր մէկ քանիները տա-
ճարին համար կ'ըսէին թէ , Գեղե-
ցիկ քարերով ու նուէրներով զար-
6 դարուած է , ըսաւ . Աս բաները
որ կը տեսնէք , օրեր պիտի գան
որ ան ատենը քար մը քարի վրայ
7 պիտի չմնայ՝ որ չքակուի ։ Հար-
ցուցին իրեն ու ըսին . Վարդապետ՝
ե՞րբ պիտի ըլլան աս բաները , և
ի՞նչ է նշանը՝ երբոր աս բաները
8 պիտի ըլլան ։ Ան ալ ըսաւ . Զըգ-
գոյշ կեցէք՝ չխաբուիք . ինչու որ
շատերը պիտի գան իմ անունովս՝
ու ըսեն թէ , Ես եմ Քրիստոսը .
ու ժամանակը մօտեցած է . ուրեմն
9 անոնց ետևէն չերթաք ։ Բայց
երբոր լսէք պատերազմներ և խռո-
վութիւններ՝ մի՛ վախնաք . ինչու
որ պէտք է առաջ աս բաները ըլ-
լան , բայց վախճանը իսկոյն չէ ։
10 Ան ատենը ըսաւ անոնց . Ազգ
ազգի վրայ պիտի ելլէ , ու թագա-
ւորութիւն թագաւորութեան վը-
11 րայ . Եւ տեղ տեղ մեծ երկրա-
շարժութիւններ պիտի ըլլան . ու
սովեր և մահտարաժամներ , նաև
երկինքէն սոսկալի բաներ և մեծ
12 նշաններ պիտի ըլլան ։ Բայց աս
ամէն բաներէն առաջ՝ իրենց ձեռ-
քերը ձեզի պիտի զարնեն՝ ու հալա-
ծեն , և ժողովարաններու ու բան-
տերու պիտի մատնեն . և իմ ա-
նուանս համար թագաւորներու
ու կուսակալներու առջև պիտի
13 տարուիք ։ Եւ աս բաները վերջը
ձեզի վկայութիւն մը պիտի ըլլայ ։
14 Ուստի ձեր սրտին մէջը դրէք՝ որ
առաջուց չմտածէք պատասխան
15 տալու վրայով ։ Վասն զի ես ձե-
զի բերան ու իմաստութիւն պիտի
տամ , որուն պիտի չկրնան դէմ
խօսիլ , կամ դէմ կենալ ձեր
16 ամէն հակառակորդները ։ Եւ
պիտի մատնուիք ծնողքներէ , ու
եղբայրներէ , և ազգականներէ , ու
բարեկամներէ , ու ձեզմէ պիտի
17 սպաննեն . Եւ իմ անուանս հա-
մար ամենուն ատելի պիտի ըլլաք .
18 Բայց մէկ մազ մը ձեր գլխէն պի-
19 տի չկորսուի ։ Ձեր համբերութիւ-
նովը հոգիներդ պիտի ստանաք ։

20 Ու երբոր տեսնէք Երուսաղէմը
չորս կողմէն զօրքերով պատած ,
ան ատենը գիտցէք որ անոր աւե-
21 րումը մօտ է ։ Ան ատենը Հրէ-
աստանի մէջ եղողները՝ լեռները
թող փախչին . ու անոր մէջ ե-
ղողները թող հեռանան . և անոնք
որ ագարակներն են , թող չմտնեն
22 անոր մէջը ։ Վասն զի ան օրերը
վրէժխնդրութեան օրեր են , որ
բոլոր գրուածները կատարուին ։
23 Բայց վա՜յ ան օրերը յղի եղողնե-
րուն ու ծիծ տուողներուն . ինչու
որ մեծ նեղութիւն պիտի ըլլայ
երկրին վրայ , ու բարկութիւն
պէտք գայ աս ժողովուրդին վրայ .
24 Եւ սուրի բերնով պիտի իյնան ,
ու բոլոր ազգերուն մէջ գերի պիտի
տարուին . ու Երուսաղէմ ազգե-
րուն ոտքէ կոխան պիտի ըլլայ ,
մինչև որ ազգերուն ժամանակները
25 լմըննայ ։ Ու արեգակին և լուսնին
ու աստղերուն վրայ նշաններ պիտի
ըլլան . ու երկրի վրայ ազգերը
ապշութեամբ պիտի տագնապին ,
և ծովը ու ալիքները պիտի գոռան .
26 Մարդոց սիրտերը պիտի նուաղին
իրենց վախէն՝ և աշխարհի վրայ
գալու բաներուն սպասելէն . ինչու
որ երկնից զօրութիւնները
27 պիտի շարժին ։ Եւ ան ատենը
պիտի տեսնեն Որդին մարդոյ ամ-
պի մէջ եկած , զօրութիւնով ու
28 մեծ փառքով ։ Ու երբոր աս բա-
ները սկսին ըլլալ , ելէ՛ք ու գլուխ-
նիդ բարձրացուցէք , ինչու որ
ձեր փրկութիւնը մօտ է ։
29 Եւ առակ մը ըսաւ անոնց . Տե-
սէք թզենին ու ամէն ծառերը .
30 Երբոր կը բողբոջին , տեսնելով՝
դուք ձեզմէ կ'իմանաք թէ ալ ա-
31 մառը մօտ է ։ Նոյնպէս ալ դուք
երբոր աս բաները եղած տեսնէք ,
գիտցէք որ Աստուծոյ թագաւո-
32 րութիւնը մօտ է ։ Ճշմարիտ կ'ը-
սեմ ձեզի , որ աս ազգը պիտի
չանցնի , մինչև որ ամէն բաները
33 ըլլան ։ Երկինքը ու երկիրը պիտի
անցնին , բայց իմ խօսքերս բնաւ
34 պիտի չանցնին ։ Իսկ դուք զգու-
շացէք ձեր անձերուն , չըլլայ որ
սիրտերնիդ կերուխումով ու գինո-
վութիւնով և աշխարհային զբաղ-
մունքներով ծանրանայ , ու յան-
կարծակի ան օրը ձեր վրայ հասնի .
35 Վասն զի բոլոր երկրին երեսը բնա-
կողներուն ամենուն վրայ որո-
գայթի մը պէս պիտի հասնի ։
36 Ուստի արթուն կեցէք . ու
ամէն ատեն աղօթք ըրէք , որ ար-
ժանի ըլլաք ան բոլոր ըլլալու բա-
ներէն ազատուելու , և Որդւոյ
մարդոյ առջևը կայնելու ։

Յամի Տեառն 33

ժը Մատ. իդ. 15. Մար. ժգ. 14։
ժթ Դան. թ. 26, 27. Զաք. ժա. 1։
ի Մատ. իդ. 19։
իա Դան. թ. 27. ժբ. 7. Հռով. ժա. 25։
իբ Մատ. իդ. 29. Մար. ժգ. 24. բ Պետ. գ. 10, 12։
իգ Մատ. իդ. 29։
իդ Մատ. իդ. 30. Յայտ. ա. 7. ժդ. 14։
իե Հռով. ը. 19, 23։
իզ Մատ. իդ. 32. Մար. ժգ. 28։
իէ Մատ. իդ. 35։
իը Հռով. ժգ. 13. ա Թես. ե. 6. ա Պետ. դ. 7։
իթ ա Թես. ե. 2. բ Պետ. գ. 10. Յայտ. գ. 3. ժզ. 15։
լ Մատ. իդ. 42. իե. 13. Մար. ժգ. 33։
լա Ղկ. ժը. 1։
լբ Սաղ. ա. 5. Եփե. զ. 13։

Յամի Տեառն 33

ա Յոհ. ը. 1. 2.
բ Ղկ. իբ. 39.

37 ա Ու ցորեկները տաճարին մէջ կը
սորվեցընէր, բ և գիշերները կ'ելլէր
Ձիթենեաց ըսուած լեռը կը կե-
38 նար ։ Եւ բոլոր ժողովուրդը առ-
տուանց կանուխ իրեն կ'երթային
տաճարը՝ իր խօսքերը լսելու ։

ԳԼ. ԻԲ

1 Հրեայք դաւակցութիւն կ'ընեն Քրիստոսի դէմ ։ 3 Սատանան կը դրդէ Յուդան որ մատնէ զՔրիստոս ։ 7 Առաքեալները կը պատրաստեն զատիկը ։ 19 Քրիստոս իր սուրբ ընթրիքը կը սահմանէ. 21 իր մատնիչին ո՛վ ըլլալը կ'իմացընէ՝ առանց անոր անունը տալու. 24 իր աշակերտները փառասիրութենէ կը զգուշացընէ. 31 Պետրոսին կ'իմացընէ թէ իր հաւատքը պիտի չպակսի. 34 բայց երեք անգամ պիտի ուրանայ իր Տէրը. 39 աղօթք կ'ընէ Գեթսեմանեան պարտէզին մէջ, և արիւն քրտինք կը թափէ. 47 մէկ համբուրով մը կը մատնուի. 50 Մաղքոսին ականջը կը բժշկէ ։ 54 Պետրոս երեք անգամ կ'ուրանայ իր Տէրը. 63 Քրիստոս Նախատալից անարգութիւն և չարչարանք կը կրէ, 66 ու կը խոստովանի թէ ինքը Աստուծոյ Որդին է ։

ա Մատ. իզ. 2 : Մար. ժդ. 1 :
բ Սաղ. բ. 2 : Յոհ. ժա. 47 : Գոր. դ. 27 :
գ Մատ. իզ. 14 : Մար. ժդ. 10 : Յոհ. ժգ. 2. 27 :
դ Ջաք. ժա. 12 :
ե Մատ. իզ. 17 : Մար. ժդ. 12 :
զ Մատ. իզ. 20 : Մար. ժդ. 17 :

1 ա Բաղարջակերաց տօնը մօտեցաւ՝
2 որ Զատիկ կ'ըսուէր. բ Եւ
քահանայապետները ու դպիրները
կը փնտռէին թէ ինչպէս սպաննեն
զանիկայ, քանզի ժողովուրդէն կը
վախնային ։
3 գ Եւ Սատանան Իսկարիովտացի
մականուանեալ Յուդային ներսը
մտաւ, որ անիկայ տասուերկուքին
4 համրանքէն էր ։ Եւ գնաց քահա-
նայապետներուն ու իշխաններուն
հետ խօսք ըրաւ՝ թէ ինչպէս զանի-
5 կայ մատնէ անոնց ։ Անոնք ալ ու-
րախացան, դ և խոստացան անոր
6 ստակ տալ ։ Ու ինքը վրան ա-
ռաւ, և պատեհութիւն մը կը
փնտռէր որ զանիկայ մատնէ անոնց՝
առանց բազմութեանը ժողովուե-
լուն ։
7 ե Եւ բաղարջակերաց օրը եկաւ,
որուն մէջ պէտք էր զատիկը մոր-
8 թել ։ Ու խրկեց Պետրոսը և
Յովհաննէսը՝ ու ըսաւ. Գացէք
պատրաստեցէք մեզի զատիկը՝ որ
9 ուտենք ։ Անոնք ալ ըսին անոր.
Ո՞ւր կ'ուզես որ պատրաստենք ։
10 Եւ ըսաւ անոնց. Ահա երբոր քա-
ղաքը մտնէք, ձեզի մարդ մը պիտի
պատահի որ ջուրի սափոր մը կը տանի.
անոր ետևէն գացէք ան տունը՝ ուր որ ինքը կը
11 մտնէ. Եւ ան տանը տիրոջը ը-
սէք. Վարդապետը կ'ըսէ քեզի.
Ո՞ւր է օթևանը՝ որ հոն աշակերտ-
ներուս հետ մէկտեղ զատիկը ու-
12 տեմ ։ Ան ալ ձեզի զարդարուած
մեծ վերնատուն մը պիտի ցուցընէ.
13 հոն պատրաստեցէք ։ Եւ գացին
գտան ինչպէս որ իրենց ըսաւ. ու
զատիկը պատրաստեցին ։
14 զ Ու երբոր ժամը հասաւ՝ սեղան
նստաւ, և տասուերկու առաքեալ-
15 ները իր հետը ։ Ու ըսաւ անոնց.
Փափաքելով փափաքեցայ որ աս
զատիկը ձեզի հետ ուտեմ՝ իմ չար-
16 չարուելէս առաջ ։ Քանզի կ'ըսեմ
ձեզի, որ ալ բնաւ ասկէ պիտի
չուտեմ՝ է մինչև որ Աստուծոյ թա-
գաւորութեանը մէջ կատարուի ։
17 Եւ գաւաթը առաւ՝ գոհացաւ ու
ըսաւ. Առէք ասիկայ՝ ու բաժնե-
18 ցէք ձեր մէջը ։ ը Ինչու որ ձեզի
կ'ըսեմ, որ բնաւ որթին բերքէն
պիտի չխմեմ՝ մինչև որ Աստուծոյ
թագաւորութիւնը գայ ։
19 թ Եւ հաց առաւ՝ գոհացաւ, կտրեց
և տուաւ անոնց՝ ու ըսաւ. Աս է
իմ մարմինս, որ ձեզի համար տը-
րուած է. ժ ասիկայ ըրէք զիս յի-
20 շելու համար ։ Նոյնպէս ալ գա-
ւաթը ընթրիքէն ետև՝ ու
ըսաւ. ի Աս գաւաթը նոր ուխտ է
իմ արիւնովս, որ ձեզի համար կը
թափուի ։
21 լ Բայց ահա զիս մատնողին ձեռքը
22 ինծի հետ սեղանս է ։ խ Եւ յի-
րաւի Որդին մարդոյ կ'երթայ՝ ծ ին-
չոր որ սահմանուած է, բայց վա՜յ
ան մարդուն՝ որուն ձեռքովը անի-
23 կայ կը մատնուի ։ կ Եւ անոնք
սկսան մէջերնին հարցուփորձ ընել,
թէ իրենցմէ ո՞վ է՝ որ ան բանը
պիտի ընէ ։
24 հ Վէճ մըն ալ եղաւ անոնց մէջը՝
թէ իրենցմէ ո՛վ մեծ պիտի սե-
25 պուի ։ ձ Եւ անիկայ ըսաւ անոնց.
Ազգաց թագաւորները անոնց կը
տիրեն, և անոնք որ կ'իշխեն անոնց՝
26 բարերար կը կոչուին. ղ Բայց դուք
անանկ պիտի չըլլաք. ճ հապա ան
որ ձեր մէջը մեծ է՝ պզտիկին պէս
թող ըլլայ, և առաջնորդը սպա-
27 սաւորին պէս ։ մ Քանզի ո՞վ է
մեծը, սեղան նստո՞ղը՝ թէ սպա-
սաւորը. չէ՞ որ սեղան նստողը.
յ սակայն ես ձեր մէջը սպասաւորի մը
28 պէս եմ ։ Եւ դուք անոնք էք՝ որ
միշտ ինծի հետ կը կենայիք ն իմ
29 փորձութիւններուս մէջ. շ Ես ալ
ձեզի թագաւորութիւն մը ուխտ կ'ը-
նեմ, ինչպէս որ իմ Հայրս ինծի
թագաւորութիւն մը ուխտ ըրաւ.
30 ո Որ դուք իմ սեղանէս ուտէք ու
խմէք իմ թագաւորութեանս մէջ,
չ և աթոռներու վրայ նստիք՝ Իս-
րայէլի տասուերկու ցեղերը դա-
տելու ։
31 Եւ Տէրը ըսաւ. Սիմո՛ն Սիմո՛ն՝
ահա պ Սատանան ձեզ փնտռեց, որ
32 ցորենի պէս խարբալէ. ջ Բայց ես
քեզի համար աղօթք ըրի՝ որ քու
հաւատքդ չպակսի. ռ և դուն երբոր
դարձի գաս, քու եղբայրներդ ալ
33 հաստատէ ։ Իսկ ինքը ըսաւ ա-

Յամի Տեառն 33

է Գղ. ժդ. 15 : Գոր. ժ. 41 : Յայտ. ժթ. 9 :
ը Մատ. իզ. 29 : Մար. ժդ. 25 :
թ Մատ. իզ. 26 : Մար. ժդ. 22 :
ժ Ա Կոր. ժա. 24 :
ի Ա Կոր. ժ. 16 :
լ Սաղ. խա. 9 : Մատ. իզ. 21. 23 : Մար. ժդ. 18 : Յոհ. ժգ. 21. 26 :
խ Մատ. իզ. 24 :
ծ Գործ. բ. 23 : դ. 28 :
կ Մատ. իզ. 22 : Յոհ. ժգ. 22. 25 :
հ Մար. թ. 33 : Ղկ. թ. 46 :
ձ Մատ. ի. 25 : Մար. ժ. 42 :
ղ Մատ. ի. 26 : Ա Պետ. ե. 3 :
ճ Ղկ. թ. 48 :
մ Ղկ. ժբ. 37 :
յ Մատ. ի. 28 : Յոհ. ժգ. 13. 14 : Փիլ. բ. 7 :
ն Եբր. դ. 15 :
շ Մատ. իդ. 47 : Ղկ. ժբ. 32 : Բ Կոր. ա. 7 : Բ Տիմ. բ. 12 :
ո Մատ. ը. 11 : Ղկ. ժդ. 15 : Յայտ. ժթ. 9 :
չ Սաղ. խթ. 14 : Մատ. ժթ. 28 : Ա Կոր. զ. 2 : Յայտ. գ. 21 :
պ Ա Պետ. ե. 8 :
ջ Ամով. թ. 9 :
ռ Յոհ. ժէ. 9. 11. 15 :
ս Սաղ. ծա. 13 : Յոհ. իա. 15. 16. 17 :

Յամի Տեառն 33

վ Մատ. իզ. 34 ։ Մար. ժդ. 30 ։ Յոհ. ժգ. 38 ։
տ Մատ. ժ. 9 ։ Ղկ. թ. 3 ։ ժ. 4 ։
ր Եսա. ծգ. 12 ։ Մար. ժե. 28 ։
ց Մատ. իզ. 36 ։ Մար. ժդ. 32 ։ Յոհ. ժը. 1 ։
ւ Ղկ. իա. 37 ։
փ Մատ. զ. 13 ։ իզ. 41 ։ Մար. ժդ. 38 ։ Հմր 46 ։
ք Մատ. իզ. 39 ։ Մար. ժդ. 35 ։
օ Յոհ. ե. 30 ։ զ. 38 ։
ֆ Մատ. դ. 11 ։
ա Յոհ. ժբ. 27 ։ Եբր. ե. 7 ։
բ Հմր 40 ։
գ Մատ. իզ. 47 ։ Մար. ժդ. 43 ։ Յոհ. ժը. 3 ։
դ Մատ. իզ. 51 ։ Մար. ժդ. 47 ։ Յոհ. ժը. 10 ։

Նոր . Տէ՛ր՝ ես պատրաստ եմ քե-
զի հետ բանտը երթալու ալ , մեռ-
34 նելու ալ ։ վ Եւ անիկայ ըսաւ .
Պե՛տրոս՝ քեզի կ՚ըսեմ որ այսօր
հաւը պիտի չխօսի՝ մինչև որ դուն
իրեք անգամ ուրանաս , ըսելով
թէ՝ զիս չես ճանչնար ։
35 տ Եւ ըսաւ անոնց . Երբոր ձեզ
խրկեցի առանց քսակի ու պարկի և
կօշիկներու , բանի մը կարօտ եղա՞ք ։
36 Անոնք ալ ըսին . Բանի՛ մըն ալ
չէ . ետքը ըսաւ . Բայց հիմա ան
որ քսակ ունի՝ թող հե՛տը առնէ ,
նոյնպէս ալ պարկը . և ան որ սուր
չունի , թող իր հանդերձը ծախէ ,
ու իրեն թո՛ւր մը ծախու առնէ .
37 Քանզի կ՚ըսեմ ձեզի , որ աս գը-
րուած բանն ալ պէտք է որ իմ
վրաս կատարուի , ր Եւ անօրէննե-
րու հետ սեպուեցաւ . քանզի ինչ
որ ինծի համար գրուած է , կա-
38 տարուելու վրայ է ։ Անոնք ալ ը-
սին . Տէ՛ր՝ ահա՛ հոս երկու թուր
կայ . ան ալ ըսաւ անոնց , Հերիք
են ։
39 ց Ու ելաւ ու սովորութեանը պէս
ւ Ձիթենեաց լեռը գնաց . աշա-
կերտներն ալ իր ետևէն գացին ։
40 փ Երբոր ան տեղը հասաւ , ըսաւ ա-
նոնց . Աղօ՛թք ըրէք որ փորձու-
41 թեան մէջ չմտնէք ։ ք Եւ ինքը ա-
նոնցմէ զատուեցաւ քարընկեցի մը
չափ , ու ծնկան վրայ դալով ա-
42 ղօթք կ՚ընէր , Ու կ՚ըսէր . Հա՛յր՝
թէ որ կ՚ուզես , աս գաւաթը ինծ-
մէ անցո՛ւր . օ Բայց չէ թէ իմ
կամքս՝ հապա քու՛կդ թող ըլլայ ։
43 Ու երկինքէն ֆ հրեշտակ մը երևցաւ
անոր՝ և կը զօրացընէր զանիկայ .
ա ու սաստիկ նեղութեան մէջ ըլ-
լալով՝ աւելի ջերմեռանդութեամբ
44 աղօթք կ՚ընէր ։ Եւ իր քրտինքը
արիւնի մեծ կաթիլներու պէս էր ,
որ գետինը կը թափուէր ։
45 Եւ աղօթքէն ելլելով՝ աշակերտ-
ներուն քովը եկաւ , ու գտաւ ա-
46 նոնք տրտմութենէ քնացած . Եւ
ըսաւ անոնց . Ինչո՞ւ կը քնանաք .
բ Ելէ՛ք աղօ՛թք ըրէք՝ որ փորձու-
թեան մէջ չմտնէք ։
47 Ու երբոր դեռ կը խօսէր , գ ահա՛
մէկ բազմութիւն մը , և Յուդա
ըսուածն ալ՝ տասուերկուքէն մէկը՝
անոնց առջևէն կ՚երթար , ու Յի-
սուսին մօտեցաւ որ զանիկայ համ-
48 բուրէ ։ Բայց Յիսուս ըսաւ անոր .
Յո՛ւդա՝ համբուրելո՞վ կը մատնես
49 Որդին մարդոյ ։ Երբոր անոր բո-
լորտիքը եղողները տեսան ինչ որ
պիտի ըլլար , ըսին անոր Տէ՛ր՝
50 թուրով զարնե՞նք ։ դ Եւ անոնց-
մէ մէկը՝ քահանայապետին ծառա-
յին զարկաւ , ու մէկդի հանեց ա-
51 նոր աջ ականջը ։ Պատասխան
տուաւ Յիսուս՝ ու ըսաւ . Թո՛ղ
տուէք մինչև աս տեղը . և դպաւ
անոր ականջին՝ ու բժշկեց զանի-
52 կայ ։ ե Եւ Յիսուս իր վրայ եկող
քահանայապետներուն ու տաճա-
րին իշխաններուն ու ծերերուն ը-
սաւ . Իբր թէ աւազակի՞ վրայ ե-
53 լաք սուրերով ու բիրերով ։ Ամէն
օր ձեզի հետ էի տաճարին մէջ , և
ինծի ձեռք չզարկիք . զ Բայց աս է
ձեր ժամանակը՝ ու խաւարին իշ-
խանութիւնը ։
54 է Եւ զանիկայ բռնելով տարին՝
ու քահանայապետին տունը մըտ-
ցուցին . ը Պետրոս ալ հեռուանց ու-
55 նոր ետևէն կ՚երթար ։ թ Երբոր կրակ
վառեցին գաւիթին մէջ ու մէկ-
տեղ նստան , Պետրոս ալ նստաւ
56 անոնց մէջը ։ Մէկ աղախին մը
տեսնելով զանիկայ՝ որ վառած
կրակին քովը նստեր էր , նայեցաւ
անոր ու ըսաւ . Ասիկայ ալ անոր
57 հետն էր ։ Բայց Պետրոս ուրացաւ
զանիկայ ու ըսաւ . Կնի՛կ՝ ես անի-
58 կայ չեմ ճանչնար . ժ Եւ քիչ մը
ետքը մէկ ուրիշ մը տեսաւ զանի-
կայ՝ ու ըսաւ . Դուն ալ անոնցմէ
ես . և Պետրոս ըսաւ . Մա՛րդ՝ ես
59 անոնցմէ չեմ ։ ի Եւ ժամու մը չափ
անցնելէն ետև , ուրիշ մըն ալ կը
պնդէր ու կ՚ըսէր . Յիրաւի ասիկայ
ալ անոր հետն էր , ինչու որ Գա-
60 լիլեացի է ։ Բայց Պետրոս ըսաւ .
Մա՛րդ՝ չեմ գիտեր ինչ կը զրու-
ցես դուն . և քանի որ իր խօսքը
բերանն էր , իսկոյն հաւը խօսե-
61 ցաւ ։ Եւ Տէրը դարձաւ՝ ու Պետ-
րոսին նայեցաւ . լ Պետրոս ալ
միտքը բերաւ Տէրոջը խօսքը՝ որ ի-
րեն ըսեր էր թէ , խ Դեռ հաւը չը-
խօսած՝ իրեք անգամ պիտի ուրա-
62 նաս զիս ։ Ու Պետրոս դուրս ելլե-
լով՝ դառնապէս լացաւ ։
63 ծ Եւ ան մարդիկը որ Յիսուսը կը
պահէին , ծաղր կ՚ընէին զանիկայ ,
64 ու կը ծեծէին . Եւ անոր աչքերը
ծածկելով՝ անոր երեսին կը զար-
նէին , ու կը հարցընէին իրեն ըսե-
լով . Մարգարէացի՛ր՝ ո՞վ է ան որ
65 քեզի զարկաւ ։ Եւ ուրիշ շատ
բաներ կը զրուցէին իրեն՝ հայհոյե-
լով ։
66 կ Ու երբոր առտու եղաւ՝ հ ժողո-
վուրդին ծերակոյտը , քահանայա-
պետները և դպիրները ժողվուե-
ցան , ու տարին զանիկայ իրենց
ատեանը՝ և ձ ըսին . Թէ որ Քրիս-
67 տոսը դուն ես , ըսէ՛ մեզի ։ Ըսաւ
անոնց . Թէ որ ձեզի ըսեմ ալ ,
68 պիտի չհաւատաք . Եւ թէ որ ձե-
զի բան մը հարցընեմ , ինծի պա-
տասխան պիտի չտաք՝ ու ալ չթո-

Յամի Տեառն 33

ե Մատ. իզ. 55 ։ Մար. ժդ. 48 ։
զ Յոհ. ժբ. 27 ։
է Մատ. իզ. 57 ։
ը Մատ. իզ. 58 ։ Յոհ. ժը. 15 ։
թ Մատ. իզ. 69 ։ Մար. ժդ. 66 ։ Յոհ. ժը. 17, 18 ։
ժ Մատ. իզ. 71 ։ Մար. ժդ. 69 ։ Յոհ. ժը. 25 ։
ի Մատ. իզ. 73 ։ Մար. ժդ. 70 ։ Յոհ. ժը. 26 ։
լ Մատ. իզ. 75 ։ Մար. ժդ. 72 ։
խ Մատ. իզ. 34, 75 ։ Յոհ. ժգ. 38 ։
ծ Մատ. իզ. 67, 68 ։ Մար. ժդ. 65 ։
կ Մատ. իէ. 1 ։
հ Գոր. դ. 26 ։ Տես Գոր. իբ. 5 ։
ձ Մատ. իզ. 63 ։ Մար. ժդ. 61 ։

Ցամ Տեառն 33

ղՄատ. իզ. 64 ։ Մար. ժդ. 62 ։ Եբր. ա. 3 ։ ը. 1 ։
ճՄատ. իզ. 64 ։ Մար. ժդ. 62 ։
մՄատ. իզ. 65 ։ Մար. ժդ. 63 ։

69 պիտի արձակէք ։ ղԱսկէ ետև Որ-
դին մարդոյ Աստուծոյ զօրութեա-
70 նը աջ կողմը պիտի նստի ։ Եւ ա-
մէնքը ըսին . Ուրեմն դուն Աստու-
ծոյ որդի՞ն ես . ինքն ալ ըսաւ ա-
նոնց . ճԴուք կ'ըսէք թէ ես եմ ։
71 մԵւ անոնք ըսին . Ալ ի՞նչ պէտք
է մեզի վկայութիւն , ինչու որ մենք
մեզմէ անոր բերնէն լսեցինք ։

## ԳԼ. ԻԳ

1 Քրիստոս կ'ամբաստանուի Պիղատոսին առջևը , և Հերովդեսին կը խրկուի ։ 8 Հերովդէս ծաղր կ'ընէ զանիկայ ։ 12 Հերովդէս և Պիղատոս բարեկամ կ'ըլլան իրարու հետ ։ 18 Պիղատոս կ'արձակէ Բարաբբան , և Յիսուսը ձեռք կու տայ որ խաչուի ։ 27 Քրիստոս իր վրայ լացող կնիկներուն կ'իմացընէ Երուսաղէմի կործանումը . 34 աղօթք կ'ընէ իր թշնամիներուն համար ։ 39 Երկու չարագործ անձինք իր հետը կը խաչուին ։ 46 Քրիստոսի մահը , 50 և թաղումը ։

աՄատ. իէ. 2 ։ Մար. ժե. 1 ։ Յոհ. ժը. 28 ։
բԳոր. ժէ. 7 ։
գՏես Մատ. ժէ. 26 ։ իբ. 21 ։ Մար. ժբ. 17 ։
դՅոհ. ժթ. 12 ։
եՄատ. իէ. 11 ։ ա Տիմ. զ. 13 ։
զա Պետ. բ. 22 ։
էՂկ. գ. 1 ։
ըՂկ. թ. 9 ։
թՄատ. ժդ. 1 ։ Մար. զ. 14 ։
ժԵս. ծգ. 3 ։

1 Եւ աանոնց բոլոր բազմութիւնը
ոտք ելլելով՝ տարին զանիկայ
2 Պիղատոսին . Ու սկսան անոր վը-
րայով ամբաստանութիւն ընել և
ըսել . Ասիկայ գտանք՝ բՈր մեր
ազգը կը մոլորցընէր , գու կայսրին
հարկ տալէն կ'արգիլէր , դև իրեն
համար կ'ըսէր , թէ ինքը Քրիստոս
3 Թագաւոր է ։ եԻսկ Պիղատոս
հարցուց անոր՝ ու ըսաւ . Հրէից
թագաւորը դո՞ւն ես . անիկայ ալ
պատասխան տուաւ անոր՝ ու ը-
4 սաւ . Դուն կ'ըսես ։ Ան ատենը
Պիղատոս քահանայապետներուն
ու ժողովուրդներուն ըսաւ . զԵս
աս մարդուն վրայ մէկ յանցանք մը
5 չեմ գտներ ։ Բայց անոնք ոտք կը
կոխէին ու կ'ըսէին թէ , Ժողո-
վուրդը իրար կ'անցընէ , ու բոլոր
Հրէաստանի մէջ կը սորվեցընէ՝
Գալիլեայէն սկսած մինչև աս տեղս ։
6 Եւ Պիղատոս երբոր լսեց Գալիլեա-
յի համար՝ հարցուց թէ աս մար-
7 դը Գալիլեացի՞ է ։ Ու երբոր իմա-
ցաւ՝ էԹէ Հերովդէսի իշխանու-
թեան տակէն էր , զանիկայ Հե-
րովդեսին խրկեց , քանզի ան ալ ան
օրերը Երուսաղէմ էր ։
8 Եւ Հերովդէս երբոր Յիսուսը տե-
սաւ , շատ ուրախացաւ . ըՎասն
զի ինքը շատոնցմէ կը փափաքէր
անիկայ տեսնելու . թԻնչու որ անոր
վրայով շատ բաներ լսած էր , և
կը յուսար որ անկէ եղած նշան մը
9 տեսնէ ։ Ու շատ խօսքերով հարց-
ուփորձ կ'ընէր անոր . բայց անի-
կայ բնաւ իրեն պատասխան մը չը-
10 տուաւ ։ Քահանայապետները ու
դպիրներն ալ կեցեր էին , և սաս-
տիկ ամբաստանութիւն կ'ընէին
11 անոր վրայ ։ ժԻսկ Հերովդէս ա-
նարգեց զանիկայ իր զօրականնե-
րուն հետ , ու ծաղր ընելէն ետև՝
փառաւոր հանդերձներ հագցուց
անոր , և նորէն Պիղատոսին խրկեց ։
12 իՈւ ան օրը Պիղատոս և Հերովդէս
իրարու հետ բարեկամ եղան . ո-
րովհետև առաջ իրենց մէջը թշ-
նամութիւն կար ։
13 լԵւ Պիղատոս՝ քահանայապետ-
ները ու իշխանները և ժողովուրդը
14 մէկտեղ կանչեց , Ու ըսաւ անոնց .
խԱս մարդը առջևս բերիք՝ ժողո-
վուրդը մոլորցընողի մը պէս . ծև
ահա ես ձեր առջևը քննութիւն ը-
նելով՝ ատոր համար ձեր ըրած ամ-
բաստանութիւններէն՝ յանցանք մը
15 չգտայ աս մարդուն վրայ . Ո՛չ ալ
Հերովդէս , ինչու որ ձեզ անոր
խրկեցի . և ահա ատիկայ մահու
16 արժանի գործ մը ըրած չէ . կՈւ-
րեմն պատիժ մը տամ ատոր՝ ու
17 արձակեմ . ( հԻսկ տօնին ատենը
պէտք էր որ մէկը արձակէ անոնց . )
18 ձԵւ բոլոր բազմութիւնը մէկտեղ
աղաղակեցին ըսելով . Վերցուր
ատիկայ՝ ու Բարաբբան արձակէ
19 մեզի . ( Որ անիկայ քաղաքին մէջ
եղած խռովութեան մը և մար-
դասպանութեան համար բանտը
20 դրուած էր ։ ) Եւ Պիղատոս՝ Յի-
սուսը արձակել ուզելով , նորէն
21 խօսեցաւ անոնց ։ Բայց անոնք նո-
րէն կ'աղաղակէին ու կ'ըսէին .
Խաչը հանէ ատիկայ՝ խաչը հանէ ։
22 Եւ ինքը երրորդ անգամ ըսաւ ա-
նոնց . Բայց ի՞նչ չար գործ ըրած
է ատիկայ . ես ատոր վրայ մահու
արժանի յանցանք մը չգտայ . ու-
րեմն պատիժ մը տամ ատոր՝ ու
23 արձակեմ ։ Իսկ անոնք մեծաձայն
աղաղակներով ոտք կը կոխէին , ու
կ'ուզէին որ անիկայ խաչուի . և
անոնց ու քահանայապետներուն
24 ձայները զօրաւոր եղան ։ ղՈւ Պի-
ղատոս վճռեց որ անոնց խնդիրքը
25 'ի գործ դրուի ։ Եւ անոնց ուզած
մարդը՝ որ խռովութեան և մար-
դասպանութեան համար բանտը
դրուած էր , արձակեց անոնց . և
Յիսուսը իրենց կամացը յանձնեց ։
26 ճՈւ երբոր զանիկայ կը տանէին ,
Սիմոն Կիւրենացի ըսուած մէկը
բռնեցին՝ որ արտէն կու գար , և
խաչը անոր վրայ դրին՝ որ Յիսուսի
27 ետևէն բերէ ։ Ու անոր ետևէն
կ'երթար մեծ բազմութիւն ժողո-
վրդոց , նաև կանանց , որոնք կ'ող-
բային ու կու լային անոր համար ։
28 Եւ Յիսուս դարձաւ անոնց՝ ու ը-
սաւ . Ո՛վ Երուսաղէմի աղջիկներ՝
իմ վրաս մի՛ լաք , հապա ձեր ան-
ձերուն վրայ ու ձեր զաւակներուն
29 վրայ լացէք ։ մԻնչու որ ահա օրեր
կու գան՝ որոնց մէջ պիտի ըսեն .
Երանի ամուլներուն , և ան որո-

Ցամ Տեառն 33

իԳոր. դ. 27 ։
լՄատ. իէ. 23 ։ Մար. ժե. 14 ։ Յոհ. ժը. 38 ։ ժթ. 4 ։
խՀմր 1, 2 ։
ծՀմր 4 ։
կՄատ. իէ. 26 ։ Յոհ. ժթ. 1 ։
հՄատ. իէ. 15 ։ Մար. ժե. 6 ։ Յոհ. ժը. 39 ։
ձԳոր. գ. 14 ։
ղՄատ. իէ. 26 ։ Մար. ժե. 15 ։ Յոհ. ժթ. 16 ։
ճՄատ. իէ. 32 ։ Մար. ժե. 21 ։ Տես Յոհ. ժթ. 17 ։
մՄատ. իդ. 19 ։ Ղկ. իա. 23 ։

Յամի Տեառն 33

յ Եսա. բ. 19 ։ Ովս. ժ. 8 ։ Յայտ. զ. 16 ։ թ. 6 ։
ն Առակ. ժա. 31 ։ Երեմ. իե. 29 ։ Եզեկ. ի. 47 ։ իա. 3, 4 ։ ա Պետ. դ. 17 ։
շ Եսա. ծգ. 12 ։ Մատ. իէ. 38 ։
ո Մատ. իէ. 33 ։ Մար. ժե. 22 ։ Յով. ժթ. 17, 18 ։
չ Մատ. ե. 44 ։ Գործ. է. 59 ։ ա Կոր. դ. 12 ։
պ Գործ. գ. 17 ։
ջ Մատ. իէ. 35 ։ Մար. ժե. 24 ։ Յով. ժթ. 23 ։
ռ Սաղ. իբ. 17 ։ Զաք. ժբ. 10 ։
ս Մատ. իէ. 39 ։ Մար. ժե. 29 ։
վ Մատ. իէ. 37 ։ Մար. ժե. 26 ։ Յով. ժթ. 19 ։
տ Մատ. իէ. 44 ։ Մար. ժե. 32 ։
ր Մատ. իէ. 45 ։ Մար. ժե. 33 ։
ց Մատ. իէ. 51 ։ Մար. ժե. 38 ։
ւ Սաղ. լա. 5 ։ ա Պետ. բ. 23 ։
փ Մատ. իէ. 50 ։ Մար. ժե. 37 ։ Յով. ժթ. 30 ։
ք Մատ. իէ. 54 ։ Մար. ժե. 39 ։

վայրերուն՝ որ չծնան, և ծիծե-
30 րուն՝ որ կաթ չտուին ։ յԱյն ա-
տենը պիտի սկսին ըսել լեռներուն,
Մե՛ր վրայ ինկէք, ու բլուրներուն,
31 Մեզ ծածկեցէ՛ք ։ նՎասն զի թէ
որ դալար փայտին ասանկ կ'ընեն,
հապա չորին ի՞նչ պիտի ըլլայ ։
32 շՈւրիշ երկու չարագործներ ալ
բերուեցան անոր հետը սպաննուե-
33 լու ։ ոԵրբոր Գագաթ ըսուած տե-
ղը գացին, հոն խաչը հանեցին զա-
նիկայ, և ան չարագործներն ալ
մէկը աջ կողմէն՝ ու մէկալը ձախ
34 կողմէն խաչեցին ։ Եւ ըսաւ Յի-
սուս. Հա՛յր՝ չԹողութիւն տուր
ատոնց, պինչու որ չեն գիտեր ինչ
կ'ընեն ։ ջՈւ անոր հանդերձները
բաժնելու ատեննին վիճակ ձգե-
35 ցին ։ ռԵւ ժողովուրդը կայներ կը
նայէր ։ սԻշխաններն ալ անոնց հետ
կը նախատէին զանիկայ՝ ու կ'ը-
սէին. Ուրիշները ազատեց, թող
ինքզինքն ալ ազատէ՝ թէ որ ատի-
կայ է Քրիստոս՝ Աստուծոյ ընտ-
36 րեալը ։ Ծաղր կ'ընէին անիկայ
զինուորներն ալ, առջևը կու գա-
յին՝ քացախ կը մատուցանէին ա-
37 նոր, Ու կ'ըսէին. Թէ որ դուն ես
Հրէից Թագաւորը, քու անձդ ա-
38 զատէ՛ ։ վԵւ գիր մը գրուած էր
անոր վրայ՝ Յունարէն ու Լատինե-
րէն և Եբրայեցերէն գիրերով թէ,
Ասիկայ է Հրէից Թագաւորը ։
39 տԵւ ան կախուած չարագործնե-
րուն մէկը հայհոյութիւն կ'ընէր
անոր՝ ու կ'ըսէր. Թէ որ դուն
Քրիստոսն ես, ազատէ քու անձդ
40 ու մեզ ալ ։ Իսկ միւսը պատասխան
տուաւ, և զանիկայ յանդիմանե-
լով ըսաւ. Դուն Աստուծմէ չե՞ս
վախնար, որովհետև նոյն դատա-
41 պարտութեան մէջն ես ։ Ու մենք
իրաւունքով, քանզի ըրած մեր ը-
րածներուն արժանաւոր հատու-
ցումը կ'առնենք. բայց ասիկայ
42 մէկ գէշ բան մը չըրաւ ։ Եւ ըսաւ
Յիսուսին. Տէ՛ր յիշէ՛ զիս, երբ-
որ քու Թագաւորութիւնովդ գաս ։
43 Յիսուս ալ ըսաւ անոր. Ճշմա-
րիտ կ'ըսեմ քեզի. Դուն այսօր
իմ հետս դրախտին մէջը պիտի ըլ-
լաս ։
44 րԵւ ժամը վեցին ատենները էր,
ու բոլոր երկրին վրայ խաւար եղաւ
մինչև իններորդ ժամը. և արևը
45 խաւարեցաւ, ցՈւ տաճարին վա-
րագոյրը մէջտեղէն պատռեցաւ.
46 Եւ Յիսուս մեծ ձայնով աղաղակեց՝
ու ըսաւ. ւՀա՛յր՝ քու ձեռքդ կ'ա-
ւանդեմ իմ հոգիս. փու երբոր աս
ըսաւ, հոգի տուաւ ։
47 քԵւ հարիւրապետը եղած բանը
տեսնելով՝ Աստուծոյ փառք տուաւ
ու ըսաւ. Իրաւցնէ աս մարդը
48 արդար էր ։ Եւ աս տեսարանը
դիտելու համար ժողվուած բոլոր
բազմութիւնները, եղած բաները
տեսնելով՝ կուրծքերնին կը զար-
49 նէին ու ետ կը դառնային ։ օԱմէն
իր ճանչուորներն ալ հեռուն կայներ
էին, նոյնպէս ալ ան կնիկները՝ որ
իր ետևէն եկեր էին Գալիլեայէն,
ու կը տեսնէին աս բաները ։
50 ֆԵւ ահա մէկ մարդ մը Յովսէփ
անունով, որ խորհրդական էր՝ բա-
51 րի ու արդար մարդ մը, (Ասիկայ
անոնց խորհուրդին ու գործքին
հաւանութիւն տուած չէր,) Հրէ-
աներուն Արիմաթիա քաղաքէն,
աոր ինքն ալ Աստուծոյ թագա-
52 ւորութեանը կը սպասէր. Ասիկայ
Պիղատոսին գնաց, ու Յիսուսին
53 մարմինը խնդրեց ։ բԵւ զանիկայ
խաչէն իջեցընելով՝ կտաւով փաթ-
թեց, ու քարէ փորուած գերեզ-
մանի մը մէջ դրաւ, որ հոն բնաւ
54 մէկը դրուած չէր ։ Եւ ան օրը
գՈւրբաթ էր, ու շաբաթը պիտի
*սկսէր ։
55 Եւ անոր ետևէն գացին ան կնիկ-
ները՝ եոր իրեն հետ Գալիլեայէն
եկած էին, զու տեսան գերեզմանը՝
և թէ ինչպէս անոր մարմինը հոն
56 դրուեցաւ ։ Եւ դառնալով՝ էխուն-
կեր ու եղեր պատրաստեցին, և
շաբաթ օրը հանգստացան ըպա-
տուիրանքին համեմատ ։

## ԳԼ. ԻԴ

*1 Երկու հրեշտակներ Քրիստոսի յարութիւնը կ'աւետեն գերեզմանը եկող կանանց ։ 9 Անոնք ալ աս լուրը ուրիշներուն կը պատմեն ։ 13 Քրիստոս կ'երևնայ Էմմաւուս գացող երկու աշակերտներուն. 36 ետքը առաքեալներուն, և անոնց անհաւատութիւնը կը յանդիմանէ. 47 պատուէր մը կու տայ անոնց. 49 Հոգւոյն Սրբոյ գալստեան խոստմունքը կ'ընէ, 51 և կը համբառնայ երկինքը ։*

1 աՈւ մէկշաբթի օրը առտուանց
շատ կանուխ գերեզմանը ե-
կան, բու բերին ան խունկերը որ
պատրաստեր էին. և ուրիշ կնիկներ
2 ալ անոնց հետ ։ գՈւ քարը գերեզ-
մանէն մէկդի գլտորցուած գտան ։
3 դԵւ ներս մտնելով՝ Տէր Յիսուսին
4 մարմինը հոն չգտան ։ Ու եղաւ որ
երբ անոնք աս բանիս համար տա-
րակուսանաց մէջ էին, եահա եր-
կու մարդիկ լուսափայլ հանդերձ-
5 ներով հասան անոնց ։ Ու երբոր
վախով լեցուած՝ երեսնին դէպ 'ի
գետինը ծռեցին, ան մարդիկը ըսին
անոնց. Ինչո՞ւ համար ողջը մեռել-
6 ներուն հետ կը փնտռէք. Հոս չէ՛
ան, հապա յարութիւն առաւ.
զմտքերնիդ բերէք ինտո՛ր խօսե-
ցաւ ձեզի՝ երբոր դեռ Գալիլեայի

Յամի Տեառն 33

օ Սաղ. լը. 11 ։ Մատ. իէ. 55 ։ Մար. ժե. 40 ։ Տես Յով. ժթ. 25 ։
ֆ Մատ. իէ. 57 ։ Մար. ժե. 42 ։ Յով. ժթ. 38 ։
ա Մար. ժե. 43 ։ Գլ. բ. 25, 38 ։
բ Մատ. իէ. 59 ։ Մար. ժե. 46 ։
գ Մատ. իէ. 62 ։
* Յուն. լուսանար ։
ե Գլ. ը. 2 ։
զ Մար. ժե. 47 ։
է Մար. ժզ. 1 ։
ը Ել. ի. 10 ։

ա Մատ. իը. 1 ։ Մար. ժզ. 1 ։ Յով. ի. 1 ։
բ Գլ. իգ. 56 ։
գ Մատ. իը. 2 ։ Մար. ժզ. 4 ։
դ Հմր 28 ։ Մար. ժզ. 5 ։
ե Յով. ի. 12 ։ Գործ. ա. 10 ։
զ Մատ. ժզ. 21 ։ ժէ. 23 ։ Մար. ը. 36 ։ թ. 30 ։ Գլ. թ. 22 ։

Ցամի Տեառն 33

ե Յոհ. ւ բ. 22։
ը Մատ. իը. Տ։ Մար. ժզ. 10։
ի Ղւ. ը. 3։
ժ Մար. ժզ. 11։ Հմր 25։
ի Յոհ. ի. 3. 6։
Լ Մար. ժզ. 12։
խ Մատ. ժր. 20։ Հմր 36։
ծ Յոհ. ի. 14։ իա. 4։
կ Յոհ. ժթ. 25։
հ Մատ. իա. 11։ Ղւ. է. 16։ Յոհ. գ. 2։ դ. 19։ զ. 14։ Գոր. բ. 22։
ձ Գոր. ե. 22։
ղ Ղւ. իզ. 1։ Գոր. ժզ. 27։ 28։
ճ Ղւ. ա. 68։ բ. 38։ Գոր. ա. 6։
մ Մատ. իը. 8։ Մար. ժզ. 10։ Հմր 9. 10։ Յոհ. ի. 18։
յ Հմր 12։

7 մէջ էր. ըսելով, Թէ Որդին մար-
դոյ պէտք է որ մեղաւոր մարդոց
ձեռքը մատնուի, ու խաչը ելլէ, ու
երրորդ օրը յարութիւն առնէ.
8 եԵւ միտքերնին բերին անոր խօսքե-
9 րը։ ըՈւ գերեզմանէն դառնալով
աս ամէն բաները պատմեցին տաս-
նումէկին, ու բոլոր ուրիշներուն։
10 Եւ էին Մարիամ Մագդաղենացին,
իու Յովհաննան, և Յակոբոսին մայ-
րը Մարիամը, ու անոնց հետ ու-
րիշներ ալ, որ աս բաները առա-
11 քեալներուն պատմեցին։ ժԵւ ա-
նոնց առջևը ափեղցփեղ խօսքեր
երևցաւ անոնց զրուցածը, ու չէին
12 հաւատար անոնց։ իԲայց Պետրոս
ելաւ վազեց դէպ 'ի գերեզմանը,
ու ծռելով նայեցաւ, և տեսաւ որ
միայն կտաւները կը կենային. ու
գնաց իր մտքին մէջ զարմանալով
ան եղածին վրայ։
13 լԵւ ահա անոնցմէ երկուքը նոյն
օրը մէկ գեղ մը կ'երթային, որ
Երուսաղեմէն վաթսուն ասպարէզ
հեռու էր, և անոր անունը Էմ-
14 մաւուս էր։ Եւ անոնք կը խօսէին
իրարու հետ աս բոլոր եղած անց-
15 քերուն վրայով։ Ու եղաւ որ երբ
անոնք կը խօսակցէին ու խորհըր-
դածութիւն կ'ընէին, խՅիսուս
ինքն ալ մօտենալով՝ հետերնին
16 կ'երթար։ ծԲայց անոնց աչքերը
բռնուած էին, որ զինքը չճանչնան։
17 Եւ ըսաւ անոնց. Ի՞նչ է ատ խօս-
քերը, որ քալելով իրարու հետ կը
խօսակցիք, ու տրտմած ալ էք։
18 Պատասխան տուաւ անոնցմէ մէկը՝
կորուն անունը Կղէովպաս էր, ու
ըսաւ անոր. Դո՞ւն մինակ Երու-
սաղեմի մէջ կը կենաս, որ չես գի-
տեր թէ ինչեր եղաւ հոն աս օրե-
19 րըս։ Եւ ինքը ըսաւ անոնց, Ի՞նչ.
անոնք ալ ըսին իրեն, Նազովրեցի
Յիսուսին համար. հան որ Աստու-
ծոյ և բոլոր ժողովուրդին առջևը
ձգործքով ու խօսքով զօրաւոր
20 մարգարէ մը եղաւ. ղԻնչպէս քա-
հանայապետները ու մեր իշխաննե-
րը մահուան դատաստանի մատնե-
ցին անիկայ, և խաչը հանեցին։
21 Իսկ մենք կը յուսայինք՝ ճթէ անի-
կայ էր որ Իսրայէլը պիտի ազա-
տէր. և աս ամենուն վրայ աս եր-
րորդ օրն է՝ որ աս բաները եղաւ։
22 մՆաև մեր մէջէն մէկ քանի կնիկ-
ներ ալ մեզ զարմացուցին, որոնք
առտուանց կանուխ գերեզմանը
23 գացին, Ու անոր մարմինը չգտնե-
լով՝ եկան ու ըսին, թէ հրեշտակ-
ներու տեսիլք ալ տեսան. որոնք
24 ըսեր են թէ անիկայ ողջ է։ յԵւ
մերիններէն մէկքանիներն ալ գե-
րեզմանը գացին. ու անանկ գտան.
ինչպէս որ ան կնիկները զրուցե-
ցին, միայն թէ զինքը չտեսան։
25 Ան ալ ըսաւ անոնց. Ով անմիտ-
ներ ու թուլասիրտներ հաւատալու
ան բոլոր բաներուն՝ որ մարգարէ-
26 ները խօսեցան։ նՉէ՞ որ աս բա-
ներով պէտք էր Քրիստոսի չարչա-
27 րուիլ, և իր փառքը մտնել։ շՈւ
սկսելով ոՄովսէսէն և շբոլոր
մարգարէներէն՝ կը մեկնէր անոնց,
ինչ որ իրեն համար բոլոր գիրքե-
28 րուն մէջ գրուած էր։ Երբոր մօ-
տեցան ան գեղին՝ ուր որ կ'երթա-
յին, պինքն ալ կը ցուցընէր որ-
պէս՝ թէ աւելի հեռու տեղ մը
29 պիտի երթար։ ջԲայց ստի-
պեցին զինքը՝ ու ըսին. Մեր քո-
վը կեցիր, ինչու որ իրիկունը
մօտ է, և օրը իջած է. և մտաւ
30 անոնց հետ կենալու։ Ու եղաւ
որ երբ ինքը անոնց հետ սեղան
նստաւ, ռհացը առաւ՝ օրհնեց, ու
31 կտրելով՝ տուաւ անոնց։ Ան ա-
տենը անոնց աչքերը բացուեցաւ,
ու զինքը ճանչցան. և ինքը ա-
32 նոնցմէ աներևոյթ եղաւ։ Ու իրա-
րու կ'ըսէին. Չէ՞ որ սիրտերնիս
մեր ներսի դին կը բորբոքէր, երբոր
ինքը մեր հետը կը խօսէր ճամբուն
մէջ, և գիրքերը կը մեկնէր մեզի։
33 Ու ելան նոյն ժամուն Երուսա-
ղէմ դարձան, ու մէկտեղ ժող-
վուած գտան տասնումէկը ու ա-
34 նոնց հետ եղողները, Որոնք կ'ըսէ-
ին թէ, Իրաւցընէ Տէրը յարու-
թիւն առաւ, սու Սիմոնին երև-
35 ցաւ։ Եւ իրենք պատմեցին ինչ
որ ճամբուն վրայ եղաւ, և թէ ին-
տոր ինքզինքը իրենց ճանչցուց՝ հա-
ցը կտրած ատենը։
36 ՎԵւ քանի որ աս բաները կը խօ-
սէին, Յիսուս ինքը կայնեցաւ ա-
նոնց մէջտեղը՝ ու ըսաւ անոնց.
37 Խաղաղութիւն ձեզի։ Բայց ա-
նոնք զարհուրելով կը վախնային,
ու կը կարծէին թէ տոգի մը կը
38 տեսնեն։ Եւ ըսաւ անոնց. Ինչո՞ւ
խռոված էք, և ինչո՞ւ սիրտեր-
նուդ մէջը խորհուրդներ կ'ելլեն։
39 Տեսէք ձեռքերս ու ոտքերս, որ ես
ինքնս եմ. րշօշափեցէք զիս ու տե-
սէք. վասն զի ոգին՝ մարմին և ոս-
կորներ չունենար, ինտոր որ զիս
40 կը տեսնէք որ ունիմ։ Եւ աս
ըսելով՝ ձեռքերը ու ոտքերը ցու-
41 ցուց անոնց։ Ու երբոր տակաւին
ցէբէնց ուրախութենէն չէին հաւա-
տար՝ և զարմանքի մէջ էին, ըսաւ
անոնց. ւՈւտելիք մը ունի՞ք հոս։
42 Անոնք ալ կտոր մը խորոված ձուկ՝
ու մեղրախորիսխ տուին իրեն։
43 փԵւ առաւ կերաւ անոնց առջևը։
44 Եւ ըսաւ անոնց. քԱսոնք են ան

Ցամի Տեառն 33

ն Հմր 46։ Գոր. ժէ. 3։ ա Պետ. ա. 11։
շ Հմր 45։
ո Ծն. գ. 15։ իբ. 18։ իզ. 4։ խթ. 10։ Թու. իա. 9։ բ Օր. ժը. 15։
շ Սաղ. ժզ. 9. 10։ իբ։ ճլբ. 11։ Ես. է. 14։ թ. 6։ խ. 10։ 11։ ծ. 6։ ծգ։ Ե-րեմ. իգ. 5։ լգ. 14։ 15։ Եզեկ. լդ. 23։ լէ. 25։ Դան. թ. 24։ Միք. է. 20։ Մաղ. գ. 1։ դ. 2։ Տէս Յոհ. ա. 45։
պ Տէս Ծն. լբ. 26։ խբ. 7։ Մար. զ. 48։
ջ Ծն. ժթ. 3։ Գոր. ժզ. 15։
ռ Մատ. ժդ. 19։
ս ա Կոր. ժե. 5։
Վ Մար. ժզ. 14։ Յոհ. ի. 19։ ա Կոր. ժե. 5։
տ Մար. զ. 49։
ր Յոհ. ի. 20. 27։
ց Ծն. խե. 26։
ւ Յոհ. իա. 5։
փ Գոր. ժ. 41։
ք Մատ. ժզ. 21։ ժէ. 21։ ի. 18։ Մար. ր. 31։ Ղւ. թ. 22։ ժր. 31։ Հմր 6։

Յամի Տեառն 33

ժ Գոր. ժղ. 14 ։
ֆ Հմր 26 ։ Սաղ. իբ ։ Ես. ծ. 6 ։ ծգ. 2, Եւ ։ Գոր. ժէ. 3 ։
Դան. թ. 24 ։ Գոր. ժգ. 38. 46 ։ ա Յօհ. բ. 12 ։
բ Ծն. ժբ. 3 ։ Սաղ. իբ. 27 ։ Ես. խթ. 6. 22 ։ Երեմ. լա. 34 ։ Ովս. բ. 23 ։ Միք. դ. 2 ։ Մաղ. ա. 11 ։
գ Յօհ. ժե. 27 ։ Գոր. ա. 8, 22 ։ բ. 32 ։ գ. 15 ։

խօսքերը որ ձեզի խօսեցայ՝ երբոր
դեռ ձեր հետ էի թէ, պէտք է որ
կատարուի ան ամէնը՝ որ Մովսէսի
օրէնքին մէջ՝ ու մարգարէներուն
մէջ՝ և սաղմոսներուն մէջ ինծի
45 համար գրուած են ։ Ան ատե-
նը անոնց միտքը բացաւ՝ որ գիր-
46 քերը հասկընան ։ Եւ ըսաւ ա-
նոնց թէ՝ Ասանկ գրուած է, և ա-
սանկ պէտք էր Քրիստոսին չարչա-
րուիլ, ու երրորդ օրը մեռելներէն
47 յարութիւն առնել ։ Եւ անոր ա-
նունովը ապաշխարութիւն ու
մեղաց թողութիւն քարոզուիլ
բոլոր ազգերու մէջ՝ Երուսաղէմէն
48 սկսած ։ Ու դուք էք աս բաներուս
49 վկաները ։ Եւ ահա ես իմ Հօրս
խոստմունքը ձեր վրայ կը ղրկեմ ։
բայց դուք Երուսաղէմ քաղաքիս
մէջը նստեցէք, մինչև որ վերէն զօ-
րութիւն առնէք վրանիդ ։
50 Եւ զանոնք մինչև Բեթանիա
հանեց, ու իր ձեռքերը վեր վեր-
51 ցընելով՝ օրհնեց անոնք ։ Եւ ե-
ղաւ որ երբ անոնք կ'օրհնէր, զա-
տուեցաւ անոնցմէ, ու վեր կ'ելլէր
52 երկինքը ։ Անոնք ալ երկրպա-
գութիւն ընելով անոր, մեծ ու-
րախութեամբ Երուսաղէմ դար-
53 ձան ։ Եւ ամէն ատեն տաճարին
մէջն էին, ու կը գովաբանէին և
կ'օրհնէին զԱստուած ։

Յամի Տեառն 33

դ Ես. խդ. 3 ։ Յովել. բ. 28 ։ Յօհ. ժդ. 16. 26 ։ ժե. 26 ։ ժզ. 7 ։ Գոր. ա. 4 ։ բ. 1, Եւ ։
ե Գոր. ա. 12 ։
զ Թագ. բ. 11 ։ Մար. ժզ. 19 ։ Յօհ. ի. 17 ։ Գոր. ա. 9 ։ Եփե. դ. 8 ։
է Մատ. իը. 9. 17 ։
ը Գոր. բ. 46 ։ ե. 42 ։

# ԱՒԵՏԱՐԱՆ ԸՍՏ ՅՈՎՀԱՆՆՈՒ

## ԳԼՈՒԽ Ա

1 Յիսուս Քրիստոսի Աստուածութիւնը, մարդկութիւնը և պաշտօնը ։ 15 Յովհաննէսին վկայութիւնը Քրիստոսի համար ։ 39 Քրիստոս իրեն կը կանչէ Անդրէասը, Պետրոսը, Եւ ։

1 Սկիզբէն էր Բանը, ու Բանը
Աստուծոյ քովն էր, և Բանը
2 Աստուած էր ։ Անիկայ սկիզբէն
3 Աստուծոյ քովն էր ։ Ամէն բան
անով եղաւ, և առանց անոր բան
4 մը չեղաւ ինչ որ եղաւ ։ Կեանքը
անով էր, ու կեանքը մարդոց
5 լոյսն էր ։ Եւ լոյսը խաւարի մէջ
կը լուսաւորէր ։ ու խաւարը անի-
կայ չհասկըցաւ ։
6 Աստուծմէ ղրկուած մարդ մը
կար, որուն անունը Յովհաննէս
7 էր ։ Անիկայ վկայութեան եկաւ՝
որ Լոյսին համար վկայէ, որ ա-
մէնքը անոր միջոցովը հաւատան ։
8 Ինքը չէր ան Լոյսը, հապա եկաւ
որ Լոյսին համար վկայութիւն տայ ։
9 Ճշմարիտ Լոյսը ան էր, որ աշ-
խարհ *եկող բոլոր մարդիկը կը
10 լուսաւորէ ։ Ինքը աշխարհին մէջն
էր, և աշխարհս անով եղաւ, ու
11 աշխարհս անիկայ չճանչցաւ ։ Ի-
րեններուն եկաւ, և իրենները զին-
12 քը չընդունեցին ։ Բայց որոնք որ
զինքը ընդունեցին, անոնց իշխա-
նութիւն տուաւ Աստուծոյ որդի-
ներ ըլլալու, որոնք կը հաւատան իր
13 անուանը ։ Որ անոնք ոչ արիւնէ
և ոչ մարմնի կամքէ՝ ոչ ալ մար-
դու կամքէ, հապա Աստուծմէ ծը-
14 նան ։ Եւ Բանը մարմին եղաւ,
ու մեր մէջը բնակեցաւ, (և անոր
փառքը տեսանք, Հօրմէն միածնի
փառքին պէս,) շնորհքով ու ճըշ-
մարտութիւնով լեցուն ։
15 Յովհաննէս վկայեց անոր հա-
մար, և աղաղակեց ըսելով ։ Ասի-
կայ է՝ որուն համար կը գրուցէի ։
Ան որ իմ ետևէս կու գայ, ինծմէ
առաջ եղաւ ։ Ինչու որ ինծմէ ա-
16 ռաջ էր ։ Եւ անոր լեցունութե-
նէն մենք ամէնքս շնորհք առինք՝
17 շնորհքի տեղ ։ Ինչու որ օրէնքը
Մովսէսին ձեռքովը տրուեցաւ, բայց
շնորհքը ու ճշմարտութիւնը Յի-
սուսս Քրիստոսի ձեռքովը եղան ։
18 Մէկը երբէք զԱստուած տեսած
չէ, բայց միածին Որդին՝ որ Հօրը
ծոցն է, անիկայ պատմեց ։
19 Ու Յովհաննէսին վկայութիւնը
աս է, երբոր Հրէաները Երուսա-
ղէմէն քահանաներ ու Ղևտացիներ
ղրկեցին որ հարցընեն անոր թէ,
20 Դուն ո՞վ ես ։ Եւ անիկայ խոս-

ա Առակ. ը. 22. 23, Եւ ։ Կող. ա. 17 ։ ա Յօհ. ա. 1 ։ Յայտ. ա. 2 ։ ժթ. 13 ։
բ Առակ. ը. 30 ։ Գղ. ժէ. 5 ։ ա Յօհ. ա. 2 ։
գ Փիլ. բ. 6 ։ ա Յօհ. ե. 7 ։
Յա. Տ. 26
դ Ծն. ա. 1 ։
ե Սաղ. լգ. 6 ։ Հմր 10 ։ Եփե. գ. 9 ։ Կող. ա. 16 ։ Եբր. ա. 2 ։ Յայտ. դ. 11 ։
զ Գղ. ե. 26 ։ ա Յօհ. ե. 11 ։
է Գղ. ը. 12 ։ թ. 5 ։ ժբ. 35. 46 ։
ը Գղ. գ. 19 ։
թ Մաղ. գ. 1 ։ Մատ. գ. 1 ։ Ղու. գ. 2 ։ Հմր 33 ։ ժ Գոր. ժթ. 4 ։ ի Հմր 4 ։ Ես. խթ. 6 ։ ա Յօհ. բ. 8 ։ * Կամ գալով ։ լ Հմր 3 ։ Եբր. ա. 2 ։ ժա. 3 ։ խ Ղու. ժթ. 14 ։ ծ Գոր. դ. 26 ։ ժգ. 46 ։ կ Ես. ծզ. 5 ։ Հռով. ր. 15 ։ Գաղ. դ. 26 ։ բ Պետ. ա. 4 ։ ա Յօհ. գ. 1 ։

Յամի Տեառն 26

կ Գղ. գ. 5 ։ Յակ. ա. 18 ։ ա Պետ. ա. 23 ։
հ Մատ. ա. 16. 20 ։ Ղու. ա. 31. 35 ։ բ. 7 ։ ա Տիմ. գ. 16 ։
ձ Հռով. ա. 3 ։ Գաղ. դ. 4 ։ Եբր. բ. 11. 14. 16. 17 ։
ղ Ես. խ. 5 ։ Մատ. ժէ. 2 ։ Գղ. բ. 11 ։ ժա. 40 ։ բ Պետ. ա. 17 ։
ճ Կող. ա. 19 ։ բ. 3. 9 ։
մ Հմր 32 ։ Գղ. գ. 32 ։ ե. 33 ։
յ Մատ. գ. 11 ։ Մար. ա. 7 ։ Ղու. գ. 16 ։ Հմր 27. 30 ։ Գղ. գ. 31 ։
ն Գղ. բ. 58 ։ Կող. ա. 17 ։
Յա. Տ. 30
շ Գղ. գ. 34 ։ Եփե. ա. 6. 7. 8 ։

Կող. ա. 19 ։ բ. 9. 10 ։ ո Եւ. ի. 1, Եւ ։ բ Օր. դ. 44 ։ ե. 1 ։ լդ. 4 ։ չ Հռով. գ. 24 ։ ե. 21 ։ զ. 14 ։ պ Գղ. բ. 32 ։ ժգ. 6 ։ ջ Եւ. լդ. 20 ։ բ Օր. դ. 12 ։ Մատ. ժա. 27 ։ Ղու. ժ. 22 ։ Գղ. զ. 46 ։ ա Տիմ. ա. 17 ։ զ. 16 ։ ա Յօհ. դ. 12. 20 ։ ռ Հմր 14 ։ Գղ. դ. 16. 18 ։ ա Յօհ. դ. 9 ։ ս Գղ. ե. 33 ։ վ Ղու. գ. 15 ։ Գղ. զ. 28 ։ Գոր. ժգ. 25 ։

Յամի Տեառն 30

տուվանեցաւ ու չուրացաւ. խոստովանեցաւ թէ Ես Քրիստոսը
21 չեմ ։ Ու հարցուցին անոր. Հապա ի՞նչ, *Եղիա՞ն ես. և ըսաւ,
Չեմ. †Ա՞ն մարգարէ՞ն ես. պա-
22 տասխան տուաւ թէ Չէ ։ Ան
ատենը ըսին անոր. Դուն ո՞վ ես.
ըսէ՛ մեզի, որ պատասխան տանինք
մեզ խրկողներուն. դուն ի՞նչ կ՚ը-
23 սես քեզի համար ։ ‡Ըսաւ. Ես
անոր ձայնն եմ՝ որ անապատին մէջ
կը կանչէ. Շիտկեցէ՛ք Տէրոջը
ճամբան. *ինչպէս որ Եսայի մար-
24 գարէն ըսաւ ։ Եւ ան խրկուած-
25 ները փարիսեցիներէն էին. Ու
հարցուցին իրեն ըսելով. Հապա
ինչո՞ւ մկրտութիւն կ՚ընես, թէ
որ դուն Քրիստոսը չես, ու ո՛չ
26 Եղիան, և ոչ մարգարէն ։ Պա-
տասխան տուաւ անոնց Յովհաննէս՝
ու ըսաւ. †Ես ջրով կը մկրտեմ.
‡բայց ձեր մէջը մէկը կայ՝ որ դուք
27 ան չէք ճանչնար. *Անիկայ է իմ
ետևէս եկողը՝ որ ինծմէ առաջ ե-
ղաւ, որ ես արժանի չեմ անոր
28 կօշիկին կապը քակելու ։ Աս բա-
ները †Բեթաբարայի մէջ եղաւ Յոր-
դանանու ան դիի կողմը, ուր որ
Յովհաննէսը կը կենար՝ ու կը մը-
կըրտէր ։
29 Հետևեալ օրը Յովհաննէս տե-
սաւ Յիսուսը որ իրեն կու գար, և
ըսաւ. Ահա Աստուծոյ *Գառը՝ †որ
30 աշխարհի մեղքը կը վերցնէ ։ ‡Ա-
սիկայ է՝ որուն համար ես կը զրու-
ցէի. Իմ ետևէս մարդ մը կու գայ՝
որ ինծմէ առաջ եղաւ, ինչու որ
31 ինծմէ առաջ էր ։ Ու ես զանիկայ
չէի ճանչնար, բայց *անոր համար
ես եկայ ջրով մկրտելու, որ անի-
32 կայ Իսրայէլին յայտնուի ։ †Եւ
Յովհաննէս վկայութիւն տուաւ ը-
սելով թէ, Կը տեսնէի Հոգին՝
որ աղաւնիի պէս երկինքէն կ՚իջ-
նէր, ու անոր վրայ կը հանգչէր ։
33 Եւ ես զանիկայ չէի ճանչնար, բայց
ան որ զիս խրկեց ջրով մկրտելու,
ինքը ըսաւ ինծի Որու վրայ տես-
նես Հոգին, որ կ՚իջնէ ու կը
հանգչի անոր վրայ, ‡անիկայ է որ
34 Սուրբ Հոգիով կը մկրտէ ։ Ես
ալ տեսայ, ու վկայեցի թէ ասիկայ
է Աստուծոյ Որդին ։
35 *Հետևեալ օրը դարձեալ Յով-
հաննէս կայներ էր, և իր աշա-
36 կերտներէն երկուքը ։ Ու նայելով
Յիսուսին վրայ՝ որ կը պտըտէր,
ըսաւ. †Ահա՛ Աստուծոյ Գառը ։
37 Եւ լսեցին անկէ երկու աշակերտ-
ները՝ երբոր կը խօսէր, ու գացին
38 Յիսուսին ետևէն ։ Յիսուս երբոր
դարձաւ՝ ու տեսաւ անոնք որ իր
ետևէն կու գային, ըսաւ անոնց.
Ի՞նչ կ՚ուզէք. անոնք ալ ըսին
իրեն. Ռաբբի, (որ թարգմա-
նուելով՝ վարդապետ ըսել է,)
39 ո՞ւր է քու օթևանդ ։ Ըսաւ ա-
նոնց. Եկէք ու տեսէ՛ք. եկան ու
տեսան ուր տեղ որ էր իր օ-
թևանը. և ան օրը անոր քովը
կեցան, ինչու որ ժամը տասնին
40 ատեններն էր ։ Սիմոն Պետրոսին
եղբայրը *Անդրէաս ան երկուքէն
մէկն էր, որ լսեցին Յովհաննէսէն,
41 և անոր ետևէն գացին ։ Ասիկայ
նախ իր Սիմոն եղբայրը կը գտնէ,
և կ՚ըսէ անոր. Գտանք Մեսիան,
(որ Քրիստոս կը թարգմանուի.)
42 Ու տարաւ զանիկայ Յիսուսին քո-
վը. Յիսուս անոր նայելով՝ ըսաւ.
Դուն ես Յովնանին որդին Սիմո-
նը, †դուն Կեփաս պիտի ըսուիս,
որ *Պետրոս կը թարգմանուի ։
43 Հետևեալ օրը Յիսուս Գալի-
լեա ելլել ուզեց, և Փիլիպպոսը
գտնելով՝ ըսաւ անոր. Եկուր իմ
44 ետևէս ։ ‡Եւ Փիլիպպոսը Բեթ-
սայիդայէն էր՝ Անդրէասին ու
45 Պետրոսին քաղաքէն ։ Փիլիպպոս
*կը գտնէ Նաթանայէլը՝ և կ՚ըսէ
անոր. Ան՝ որուն համար †Մովսէս
օրինաց մէջ գրեց, ‡և մարգարէ-
ներն ալ, զանիկայ գտանք, *այսինքն
Յիսուս †Նազովրեցին՝ Յովսէփին
46 որդին ։ Եւ Նաթանայէլ ըսաւ
անոր. ‡Նազարեթէն կարելի՞ է
որ աղէկ բան մը ըլլայ. ըսաւ անոր
47 Փիլիպպոս. Եկուր ու տես ։ Յի-
սուս երբոր տեսաւ Նաթանայէլը՝
որ դէպ ՚ի իրեն կու գար, ըսաւ
անոր համար. *Ահա՛ իրաւցընէ
Իսրայէլացի մը, որուն ներսը նեն-
48 գութիւն չկայ ։ Նաթանայէլ
ըսաւ անոր. Ո՞ւսկից կը ճանչնաս
զիս. պատասխան տուաւ Յիսուս,
ու ըսաւ անոր. Դեռ Փիլիպպոսը
քեզ չկանչած, դուն որ թզենիին
տակն էիր, ես քեզ տեսայ ։
49 Պատասխան տուաւ Նաթանայէլ՝
ու ըսաւ անոր. Ռաբբի՛ †դուն ես
Աստուծոյ Որդին, ‡դուն ես Իս-
50 րայէլի թագաւորը ։ Յիսուս պա-
տասխան տուաւ և ըսաւ անոր.
Ասոր համար՝ որ քեզի ըսի թէ
քեզ թզենիին տակը տեսայ, կը
հաւատա՞ս. ասկէ աւելի մեծ բա-
51 ներ պիտի տեսնես ։ Ու ըսաւ ա-
նոր. Ճշմարիտ ճշմարիտ կ՚ըսեմ
ձեզի. *ասկէ ետև պիտի տեսնէք
երկինքը բացուած, և Աստուծոյ
հրեշտակները՝ որ կ՚ելլեն ու կ՚իջ-
նեն Որդւոյ մարդոյ վրայ ։

## ԳԼ. Բ

1 Քրիստոս ջուրը գինիի կը փոխէ, 12 կ՚երթայ Կափառնայում, ու ետքը Երուսաղէմ, 14 ուր տեղ տաճարէն դուրս կը հանէ գնողները

Յամի Տեառն 30

*Մաղ. դ. 5։ Մատ. ժէ. 10։ †Բ Օր. ժը. 15, 18։ ‡Մատ. գ. 3։ Մար. ա. 3։ Ղու. գ. 4։ Գլ. գ. 28։ *Ես. խ. 3։ †Մատ. գ. 11։ ‡Մաղ. գ. 1։ *Հմր 15, 30։ Գոր. ժթ. 4։ †Դատ. է. 24։ Գլ. ժ. 40։ *Ել. ժբ. 3։ Ես. ծգ. 7։ Հմր 36։ Գոր. ը. 32։ ա Պետ. ա. 19։ Յայտ. ե. 6, ...։ †Ես. ծգ. 11։ ա Կոր. ժե. 3։ Գաղ. ա. 4։ Եբր. ա. 3։ բ. 17։ թ. 28։ ա Պետ. բ. 24։ գ. 18։ ա Յով. բ. 2։ գ. 5։ դ. 10։ Յայտ. ա. 5։ ‡Հմր 15, 27։ *Մաղ. գ. 1։ Մատ. գ. 6։ Ղու. ա. 17, 76, 77։ գ. 3, 4։ †Մատ. գ. 16։ Մար. ա. 10։ Ղու. գ. 22։ Գլ. ե. 32։ ‡Մատ. գ. 11։ Գոր. ա. 5։ ը. 4։ ժ. 44։ ժթ. 6։ *Հմր 29։

Յամի Տեառն 30

*Մատ. դ. 18։ †Մատ. ժզ. 18։ *Յն. վէմ։ ‡Գլ. ժբ. 21։ *Գլ. իա. 2։ †Ծն. գ. 15։ խթ. 10։ բ Օր. ժը. 15, ...։ Տես Ղու. իդ. 27։ *Ես. դ. 2։ է. 14։ թ. 6։ ծգ. 2, ...։ Միք. ե. 2։ Զաք. զ. 12։ թ. 9։ Տես նաև Ղու. իդ. 27։ †Մատ. բ. 23։ Ղու. բ. 4։ ‡Գլ. է. 41, 42, 52։ *Սաղ. լբ. 2։ հգ. 1։ Գլ. ը. 39։ Հռով. բ. 28, 29։ թ. 6։ †Մատ. ժդ. 33։ ‡Մատ. իա. 5։ իէ. 11, 42։ Գլ. ժբ. 37։ ժթ. 3։ *Ծն. իը. 12։ Մատ. դ. 11։ Ղու. բ. 9, 13։ իբ. 43։ իդ. 4։ Գոր. ա. 10։

Յամի Տեառն 30

*և ծախողները · 19 կը նախաձայնէ իր մահը և յարութիւնը ։ 23 Շատերը իր հրաշքները տեսնելով կը հաւատան իրեն , բայց ինքը իր անձը չհաւատար անոնց ։*

1 Ու երրորդ օրը հարսնիք մը կար
Գալիլեայի ᵃԿանայ քաղաքը , և
2 Յիսուսի մայրը հոն էր ։ Յիսուս
ալ կանչուեցաւ այն հարսնիքը՝ ու
3 իր աշակերտներն ալ ։ Ու երբոր
գինին պակսեցաւ , Յիսուսին մայ-
4 րը ըսաւ անոր . Գինի չունին ։ Յի-
սուս ըսաւ անոր . ᵇԿնիկ՝ ᶜդուն
իմ հետս ի՞նչ բան ունիս . ᵈիմ
5 ժամանակս դեռ հասած չէ ։ Իր
մայրը սպասաւորներուն ըսաւ .
6 Ի՛նչ որ ձեզի ըսէ , ըրէ՛ք ։ Հոն
վեց հատ քարէ կարասներ դրուած
էին ᵉՀրէից մաքրուելու սովորու-
թեանը համեմատ , որ անոնց ամէն
մէկը երկու կամ իրեք մար բռն
7 կ՚առնէր ։ Յիսուս ըսաւ անոնց .
Լեցուցէ՛ք ատ կարասները ջրով .
ու լեցուցին անոնք մինչև բերանը ։
8 Եւ ըսաւ անոնց . Հիմա հանեցէ՛ք
ու սեղանապետին տարէ՛ք , անոնք
9 ալ տարին ։ Ու սեղանապետը
երբոր գինի եղած ᶠջուրին համը
առաւ , և չէր գիտեր ուսկից ըլլա-
լը · (բայց սպասաւորները որ ջուրը
քաշեր էին , գիտէին .) սեղանա-
10 պետը կը խօսի փեսային , Ու անոր
կ՚ըսէ . Ամէն մարդ աղէկ գինին ա-
ռաջ կը մատուցանէ . ու երբոր
խմած կ՚ըլլան , այն ատենը ստոր-
նագոյնը · բայց դուն աղէկ գինին
11 մինչև հիմա պահեցիր ։ Յիսուս
հրաշքներուն սկիզբը աս ըրաւ Գա-
լիլեայի Կանայ քաղաքին մէջ , ᵍև իր
փառքը յայտնեց . ու իր աշա-
կերտները հաւատացին իրեն ։
12 Ասկէ ետև Յիսուս Կափառնա-
յում իջաւ , ինքը՝ և իր մայրը՝ ու
իր եղբայրները և իր աշակերտնե-
րը , ու շատ օրեր հոն չկեցաւ ։
13 ʰԵւ Հրէից զատիկը մօտ էր , ու
14 Յիսուս Երուսաղէմ ելաւ . ⁱԵւ
տաճարին մէջ գտաւ արջառ ու
ոչխար և աղաւնի ծախողները , ու
ստակ փոխողներն ալ՝ որ նստեր
15 էին . Եւ չուանէ խարազան մը շի-
նելով ամէնը տաճարէն դուրս հա-
նեց , ոչխարներն ալ ու արջառ-
ներն ալ , և ստակ փոխողներուն
պղինձները ցիրուցան ըրաւ , ու սե-
16 ղանները կործանեց . Եւ աղաւնի
ծախողներուն ըսաւ . Ասկէ վեր-
ցուցէ՛ք ատոնք , ʲիմ Հօրս տունը
17 առուտուրի տուն մի՛ ընէ՛ք ։ Եւ
իր աշակերտները միտքերնին բերին
որ գրուած է . ᵏՔու տանդ նա-
խանձը զիս կերաւ ։
18 Ան ատենը պատասխան տուին
Հրէաները ու ըսին անոր . ˡԻ՞նչ
նշան կը ցուցընես մեզի՝ որ ատ բա-
19 ները կ՚ընես ։ Պատասխան տուաւ
Յիսուս՝ ու ըսաւ անոնց . ᵐՔակե-
ցէ՛ք աս տաճարը , ու իրեք օրուան
20 մէջ անիկայ պիտի կանգնեմ ։ Եւ
Հրէաները ըսին . Քառասունու-
վեց տարուան մէջ շինուեցաւ աս
տաճարը , և դուն իրեք օրուան
մէջ պիտի կանգնե՞ս անիկայ ։
21 Բայց ինքը ⁿիր մարմնոյն տաճարին
22 համար կ՚ըսէր ։ Ուստի երբոր ինքը
մեռելներէն յարութիւն առաւ ,
ᵒիր աշակերտները միտքերնին բե-
րին թէ աս բանը ըսած էր . ու
հաւատացին գիրքին՝ և Յիսուսի
ըսած խօսքին ։
23 Ու երբոր զատկի տօնին ատենը
Երուսաղէմ էր , շատ մարդիկ ա-
նոր ըրած հրաշքները տեսնելով՝
24 հաւատացին անոր անուանը ։ Բայց
ինքը Յիսուս իր անձը անոնց չէր
հաւատար , ինչու որ ինքը գիտէր
25 ամէն մարդ . Ու պէտք չէր որ մէկը
մարդու համար վկայութիւն տայ
իրեն . ᵖՔանզի ինքը գիտէր թէ
ինչ կայ մարդուն ներսի դին ։

Գ Լ . Գ

*1 Քրիստոս կը սորվեցրնէ Նիկոդեմոսին՝ թէ վերստին ծնունդը հարկաւոր է . 14 թէ փրկուելու համար պէտք է հաւատքով իր մահուանը նայիլ . 16 թէ Աստուած մեծ սէր ունի մարդոց վրայ . 18 թէ անհաւատները պիտի դատապարտուին . 23 Յովհաննէսին մրտութիւնը . անոր վկայութիւնը և վար-դապետութիւնը Քրիստոսի վրայով ։*

1 Ու փարիսեցիներէն մարդ մը կար՝
Նիկոդեմոս անունով , որ Հը-
2 րէից իշխան էր ։ ᵃԱսիկայ գիշե-
րով ᵇանոր քովը եկաւ , և ըսաւ
անոր՝ Ռաբբի՛ գիտենք որ դուն
Աստուծմէ վարդապետ եկած ես .
ինչու որ ᶜմէկը չկրնար ընել ատ
հրաշքները՝ որ դուն կ՚ընես , թէ
որ ᵈԱստուած իր հետը չըլլայ ։
3 Պատասխան տուաւ Յիսուս՝ և
ըսաւ անոր . Ճշմարիտ ճշմարիտ
կ՚ըսեմ քեզի , ᵉթէ որ մէկ մարդ
մը ᶠնորէն չծնանի , չկրնար Աս-
տուծոյ թագաւորութիւնը տես-
4 նել ։ Նիկոդեմոս ըսաւ անոր .
Ինչպէ՞ս կրնայ մարդ մը ծնանիլ ,
որ ծերացած է . Չըլլար ու՞ր բան
է որ նորէն իր մօրը որովայնը
5 մտնէ ու ծնանի ։ Յիսուս պա-
տասխան տուաւ . Ճշմարիտ ճշմա-
րիտ կ՚ըսեմ քեզի , ᵍթէ որ մէկ
մարդ մը ջուրէն ու Հոգիէն չծնա-
նի , չկրնար Աստուծոյ թագաւո-
6 րութիւնը մտնել ։ Մարմինէն ծնա-
ծը մարմին է , ու Հոգիէն ծնածը
7 հոգի է ։ Դուն մի՛ զարմանար
որ քեզի ըսի , Պէտք է ձեզի նորէն
8 ծնանիլ ։ ʰՀովը ուր որ ուզէ՝

Յամի Տեառն 30

ᵃՅհն · Յես · ժԹ · 28 ։
ᵇԴլ · ժԹ · 26 ։
ᶜԹագ · ժգ · 10 ։ ժԹ · 22 ։
ᵈԳլ · Է · 6 ։
ᵉՄար · Է · 3 ։
ᶠԳլ · Դ · 46 ։
ᵍԳլ · Ա · 14 ։
ʰՄատ · ժբ · 46 ։
ⁱԵլ · ժբ · 14 ։ բՕր · ժզ · 1 · 16 ։ Հմր 23 · Գլ · Ե · 1 ։ Դ · 4 ։ ժա · 55 ։
ʲՄատ · իա · 12 ։ Մար · ժա · 15 ։ Ղու · ժԹ · 45 ։
ᵏՂու · Բ · 49 ։
ˡՍաղ · կԹ · 9 ։
ᵐՄատ · ժբ · 38 ։ Գլ · Զ · 30 ։

Յամի Տեառն 30

ᵐՄատ · իզ · 61 ։ իէ · 40 ։ Մար · ժդ · 58 ։ ժե · 29 ։
ⁿԿող · Բ · 9 ։ Եբր · Բ · 2 ։ ա Կոր · Գ · 16 ։ Զ · 19 ։ բ Կոր · Զ · 16 ։
ᵒՂու · իդ · 8 ։
ᵖԹագ · ժզ · 7 ։ ա Մն · իր · 9 ։ Մատ · Թ · 4 ։ Մար · Բ · 8 ։ Գլ · Զ · 65 ։ ժզ · 30 ։ Գոր · ա · 24 ։ Յայտ · Բ · 23 ։

ᵃԳլ · Է · 50 ։ ժԹ · 39 ։
ᵇՈ՛չ Յիսուսին
ᶜԳլ · Թ · 16 · 33 ։ Գոր · Բ · 22 ։
ᵈԳոր · Ժ · 38 ։
ᵉԳլ · Ա · 13 ։ Գաղ · Զ · 15 ։ Տիտ · Գ · 5 ։ Յակ · Ա · 18 ։ ա Պետ · Ա · 23 ։ ա Յհ · Գ · 9 ։
ᶠԿամ վերէն
ᵍՄար · ժզ · 16 ։ Գոր · Բ · 38 ։
ʰԺող · ժա · 5 ։ ա Կոր · Բ · 11 ։

Յամ Տեառն 30

կը փչէ , և անոր ձայնը կը լսես ,
բայց չես գիտեր ուսկից կու գայ՝
կամ ուր կ'երթայ . ասանկ ալ
է ան ամէնը՝ որ Հոգիէն կը ծնանի ։
9 Պատասխան տուաւ Նիկոդեմոս ու
ըսաւ անոր . ե Ատ ի՞նչպէս կրնայ
10 ըլլալ ։ Պատասխան տուաւ Յի-
սուս ու ըսաւ անոր . Դուն Իս-
րայէլի մէջ վարդապետ մը՞ն ես , և
11 աս բաները չե՞ս գիտեր ։ զ Ճշմա-
րիտ ճշմարիտ կ'ըսեմ քեզի , թէ
ինչ որ գիտենք՝ կը խօսինք , և
ինչ որ տեսանք՝ կը վկայենք , է ու
մեր վկայութիւնը չէք ընդունիր ։
12 Թէ որ երկրաւոր բաները ձեզի
զրուցեցի՝ ու չէք հաւատար ,
ի՞նչպէս պիտի հաւատաք՝ թէ որ
երկնաւոր բաները ձեզի զրուցեմ ։
13 ը Եւ մէկը երկինքը չելաւ , բայց ա-
նիկայ միայն՝ որ երկինքէն իջաւ՝
Որդին մարդոյ , որ երկինքն է ։
14 թ Եւ ինչոր որ Մովսէս անապատին
մէջ օձը բարձրացուց , նանանկ ալ
պէտք է որ Որդին մարդոյ բարձ-
15 րանայ . Որ ամէն ով որ անոր հա-
ւատայ՝ չկորսուի , ի հապա յաւի-
16 տենական կեանք ունենայ ։ լ Ինչու
որ Աստուած անանկ սիրեց աշ-
խարհը մինչև որ իր միածին Որդին
տուաւ . որ ամէն ով որ անոր հա-
ւատայ՝ չկորսուի , հապա յաւիտե-
17 նական կեանք ունենայ ։ խ Վասն
զի Աստուած իր Որդին չխրկեց աշ-
խարհ , որ աշխարհը դատէ , հա-
պա՝ որ աշխարհս անով փրկուի ։
18 ծ Ան որ կը հաւատայ անոր՝ չդատա-
պարտուիր . և ան որ չհաւատար ,
անիկայ արդէն դատապարտուած
է . ինչու որ Աստուծոյ միածին Որ-
19 դւոյն անուանը չհաւատաց ։ Եւ
աս է դատապարտութիւնը՝ կ որ
լոյսը աշխարհ եկաւ , ու մարդիկ
խաւարը լոյսէն աւելի սիրեցին .
ինչու որ իրենց գործքերը չար էին ։
20 հ Վասն զի ամէն ով որ չար կը գոր-
ծէ , անիկայ լոյսը կ'ատէ , և լոյսին
քովը չգար՝ որ իր գործքերը չյան-
21 դիմանուին ։ Բայց ան որ ճշմար-
տութիւն կը գործէ , լոյսին քովը
կու գայ , որ իր գործքերը յայտնի
ըլլան թէ Աստուծով գործուե-
ցան ։
22 Աս բաներէն ետքը եկաւ Յիսուս
և իր աշակերտները Հրէաստանի
երկիրը , և հոն կը կենար անոնց
հետ մէկտեղ , ձ ու մկրտութիւն
23 կ'ընէր ։ Յովհաննէս ալ Այենոնի
մէջ ղ Սաղիմի մօտ մկրտութիւն
կ'ընէր . որովհետև հոն շատ ջուր
կար , ճ ու կու գային և կը մկր-
24 տուէին ։ մ Ինչու որ Յովհաննէս
դեռ բանտը դրուած չէր ։
25 Ան ատենը վիճաբանութիւն մը

ե Գլ. զ. 53, 61 ։
զ Մատ. ժա. 27 ։ Գլ. ա. 18 ։ է. 16 ։ ը. 28 ։ ժբ. 49 ։ ժդ. 24 ։
է Հմր 82 ։
ը Առակ. լ. 4 ։ Գլ. զ. 33, 38, 51, 63 ։ ժզ. 28 ։ Գոր. բ. 34 ։ ա Կոր. ժե. 47 ։ Եփե. դ. 9, 10 ։
թ Թու. իա. 9 ։
ժ Գլ. ը. 28 ։ ժբ. 32 ։
ի Հմր 36 ։ Գլ. զ. 47 ։
լ Հռով. ե. 8 ։ ա Յոհ. դ. 9 ։
խ Ղու. թ. 56 ։ Գլ. ե. 45 ։ ը. 15 ։ ժբ. 47 ։ ա Յոհ. դ. 14 ։
ծ Գլ. ե. 24 ։ զ. 40, 47 ։ ի. 31 ։
կ Գլ. ա. 4, 9, 10, 11 ։ ը. 12 ։
հ Յոբ. իդ. 13, 17 ։ Եփե. ե. 13 ։
ձ Գլ. դ. 2 ։
ղ Ա Թագ. թ. 4 ։
ճ Մատ. գ. 5, 6 ։
մ Մատ. ժդ. 3 ։

եղաւ Յովհաննէսին աշակերտնե-
րէն * Հրէաներուն հետ՝ մաքրու-
26 թեան վրայով ։ Ու եկան Յով-
հաննէսին և անոր ըսին . Ռաբբի՝
անիկայ որ քեզի հետ Յորդանանին
մէկալ կողմն էր , յ որուն համար
դուն վկայութիւն տուիր , ահա
ինքը կը մկրտէ . և ամէնը անոր կու
27 գան ։ Պատասխան տուաւ Յով-
հաննէս՝ և ըսաւ . ն Մարդ մը չկրր-
նար բան մը առնել , թէ որ երկին-
28 քէն տրուած չըլլայ անոր ։ շ Դուք
ձեզմէ կը վկայէք ինծի համար , որ
ըսի թէ՝ Ես Քրիստոսը չեմ , ո հա-
պա անոր առջևէն խրկուած եմ ։
29 չ Ան որ հարսը ունի , փեսան անի-
կայ է . պ բայց փեսային բարեկա-
մը՝ որ կը կենայ ու կը լսէ անոր ,
մեծապէս կ'ուրախանայ փեսային
ձայնին համար . ուստի աս իմ
30 ուրախութիւնս լցուած է ։ Անի-
կայ պէտք է որ մեծնայ , բայց ես
31 պզտիկնամ ։ ջ Ան որ վերէն կու
գայ՝ ամէնէն վեր է . ռ ան որ երկ-
րէն է՝ երկրաւոր է , ու երկրէն կը
խօսի . ս ան որ երկինքէն կու գայ՝
32 ամէնէն վեր է . Եւ վ ինչ որ տեսաւ
ու լսեց , ան կը վկայէ , ու անոր
33 վկայութիւնը մէկը չընդունիր ։ Ան
որ անոր վկայութիւնը կ'ընդունի ,
տ կնքեց՝ թէ Աստուած ճշմարիտ է ։
34 ր Վասն զի ան որ Աստուած խրկեց ,
Աստուծոյ խօսքերը կը խօսի . ին-
չու որ Աստուած ց անոր չափով
35 չտար Հոգին ։ ւ Հայրը կը սիրէ
Որդին , և ամէն բան անոր ձեռքը
36 տուած է ։ փ Ան որ Որդիին կը հա-
ւատայ , յաւիտենական կեանք ու-
նի . և ան որ Որդիին չհնազանդիր ,
անիկայ կեանք պիտի չտեսնէ . հա-
պա Աստուծոյ բարկութիւնը անոր
վրայ կը մնայ ։

Յամ Տեառն 30

* Կամ Հրէայի մը
մ Գլ. ա. 7, 15, 27, 34 ։
յ ա Կոր. գ. 7 ։ Եբր. ե. 4 ։ Յակ. ա. 17 ։
ն Գլ. ա. 20, 27 ։
շ Մաղ. գ. 1 ։ Մար. ա. 2 ։ Ղու. ա. 17 ։
ո Մատ. իբ. 2 ։ բ Կոր. ժա. 2 ։ Եփե. ե. 25, 27 ։ Յայտ. իա. 9 ։
չ Երգ. ե. 1 ։
պ Հմր 13 ։ Գլ. ը. 23 ։
ջ Մատ. իը. 18 ։ Գլ. ա. 15, 27 ։ Հռով. թ. 5 ։
ռ ա Կոր. ժե. 47 ։
ս Գլ. գ. 33 ։ ա Կոր. ժե. 47 ։ Եփե. ա. 21 ։ Փիլ. բ. 9 ։
վ Հմր 11 ։ Գլ. ը. 26 ։ ժե. 15 ։
տ Հռով. գ. 4 ։ ա Յոհ. ե. 10 ։
ր Գլ. է. 16 ։
ց Գլ. ա. 16 ։
ւ Մատ. ժա. 27 ։ Իր. 18 ։ Ղու. ժ. 22 ։ Գլ. ե. 20, 22 ։ ժգ. 3 ։ ժէ. 2 ։ Եբր. բ. 8 ։
փ Ամբ. բ. 4 ։ Գլ. ա. 12 ։ գ. 47 ։ Հմր 15, 16 ։ Հռով. ա. 17 ։ ա Յոհ. ե. 10 ։

ԳԼ. Դ

1 Քրիստոս Սամարացի կնկան մը հետ կը խօսի , և իր ո՛վ ըլլալը անոր կը յայտնէ . 27 աստր վրայ իր աշակերտները կը զարմանան ։ 31 Քրիստոս կ'իմացրնէ անոնց իր նախանձը Աստուծոյ փառքին համար ։ 39 Շատ Սամարացիներ կը հաւատան անոր ։ 43 Քրիստոս Գալիլեա կ'երթայ , և կը բժշկէ ազնուականի մը որդին ։

1 Երբ՝ երբոր Տէրը իմացաւ որ փա-
րիսեցիները լսեր էն՝ թէ Յիսուս
Յովհաննէսէն աւելի աշակերտներ
2 կ'ընէ , և ա կը մկրտէ . ( Թէպէտ
չէ՛ թէ Յիսուս ինքը կը մկրտէր ;
3 հապա իր աշակերտները . ) Թո-
ղուց Հրէաստանը , ու նորէն Գա-
4 լիլեա գնաց ։ Ու պէտք եղաւ որ
5 Սամարիայի մէջէն անցնի ։ Ուստի
եկաւ Սամարացւոց մէկ քաղաքը՝
որուն անունը Սուքար էր , ան տե-
ղին մօտ՝ բ որն որ Յակոբ իր որ-
6 դւոյն Յովսէփին տուաւ . Եւ հոն

ա Գլ. գ. 22, 26 ։
բ Ծն. լգ. 19 ։ իբ. 22 ։ Յես. իդ. 32 ։

Յամի Տեառն 30

Յակոբին մէկ աղբիւրը կար . Յի-
սուս ալ ճամբայէն յոգնած ըլլա-
լով՝ ան աղբիւրին վրայ նստաւ . և
ժամը վեցին ատենները էր ։
7 Սամարիայէն կնիկ մը եկաւ ջուր
հանելու . Յիսուս ըսաւ անոր . Ին-
8 ծի ջուր տուր խմելու . ( քան-
զի իր աշակերտները քաղաքը գա-
ցեր էին ; որ ուտելիք առնեն ։ )
9 Ան ատենը Սամարացի կնիկը ըսաւ
անոր . Դուն որ Հրեայ ես , ի՞նչ-
պէս կ'ուզես ջուր խմել ինծմէ՝ Սա-
մարացի կնիկէ մը . վասն զի Հը-
րէայք Սամարացւոց հետ հաղոր-
10 դակցութիւն չէին ըներ ։ Յիսուս
պատասխան տուաւ՝ ու ըսաւ անոր .
Թէ որ դուն գիտնայիր Աստուծոյ
պարգևը , և թէ ո՛վ է ան որ քեզի
կ'ըսէ , ինծի ջուր տուր խմելու ,
դուն անկէ պիտի ուզէիր , և ինքը
քեզի կենդանի ջուր պիտի տար ։
11 Կնիկը ըսաւ անոր . Տէ՛ր՝ դուն
ջրհան ալ չունիս ու հորը
խորունկ է , ուրեմն ո՞ւսկից պիտի
ունենաս ան կենդանի ջուրը ։
12 Միթէ դուն մեր Յակոբ հօրմէն
աւելի մե՞ծ մըն ես , որ հորը
մեզի տուաւ , և ասկէ խմեց՝ ինքը
ու իր որդիները , և իր անասուննե-
13 րը ։ Պատասխան տուաւ Յիսուս՝
ու ըսաւ անոր . Ամէն ո՛վ որ աս
ջուրէն խմէ , նորէն պիտի ծարա-
ւի . բայց ո՛վ որ խմէ ան ջուրէն՝
որ ես անոր պիտի տամ , յաւի-
14 տեան պիտի չծարաւի . հապա ան
ջուրը՝ որ ես անոր պիտի տամ ,
պիտի ըլլայ անոր ներսի դին ջուրի
աղբիւր մը՝ որ յաւիտենական կե-
15 նաց համար կը բղխէ ։ Կնիկը ըսաւ
անոր . Տէ՛ր՝ տո՛ւր ինծի ան ջուրը՝
որ չծարաւիմ , և հոս չգամ ջուր
16 հանելու ։ Յիսուս ըսաւ անոր .
Գնա՛ քու էրիկդ կանչէ , ու հո՛ս
17 եկուր ։ Կնիկը պատասխան տա-
լով ըսաւ . Ես էրիկ չունիմ .
Յիսուս ըսաւ անոր . Աղէկ ըսիր
18 թէ , Էրիկ չունիմ . Ինչու որ դուն
հինգ էրիկ ունեցեր ես , և ան որ
հիմա ունիս , քու էրիկդ չէ . ա-
19 տիկայ շիտակ ըրուցեցիր ։ Կնիկը
ըսաւ անոր . Տէ՛ր՝ էկը տեսնեմ որ
20 դուն մարգարէ մըն ես ։ Մեր հայ-
րերը աս լեռանս վրայ երկրպա-
գութիւն ըրին . և դուք կ'ըսէք
թէ , Միայն Երուսաղէմն է տեղը ,
ուր պէտք է երկրպագութիւն ը-
21 նել ։ Յիսուս ըսաւ անոր . Կնի՛կ
հաւատա՛ ինծի՝ որ ժամանակ կու
գայ , որ ան ատենը ո՛չ աս լեռանը
վրայ՝ և ո՛չ Երուսաղէմի մէջ եր-
կըրպագութիւն պիտի ընէք Հօրը ։
22 Դուք անոր երկրպագութիւն կ'ը-
նէք , որ չէք ճանչնար . մենք անոր
երկրպագութիւն կ'ընենք՝ որ կը
ճանչնանք . Ինչու որ փրկութիւ-
23 նը Հրէաներէն է ։ Բայց ժամանակ
կու գայ , ու հիմա ալ է , որ ճըշ-
մարիտ երկրպագողները երկրպա-
գութիւն պիտի ընեն Հօրը հո-
գիով ու ճշմարտութիւնով . ին-
չու որ Հայրն ալ իրեն անանկ եր-
24 կրպագողներ կ'ուզէ ։ Աստուած
Հոգի է . և իրեն երկրպագողներուն
ալ պէտք է որ հոգիով ու ճշմար-
տութիւնով երկրպագութիւն ը-
25 նեն ։ Կնիկը ըսաւ անոր . Գի-
տեմ որ Մեսիան կու գայ , ( Քը-
րիստոս ըսուածը . ) երբոր ինքը
գայ , ամէն բան մեզի պիտի
26 պատմէ ։ Յիսուս ըսաւ անոր . Ես
եմ՝ որ քեզի հետ կը խօսիմ ։
27 Եւ աս խօսքին վրայ իր աշակերտնե-
րը եկան , ու զարմացան որ
կնկանը հետ կը խօսէր . բայց ա-
նոնցմէ մէկը չըսաւ թէ՝ Ի՞նչ կ'ու-
զես , կամ ի՞նչ կը խօսիս ատոր
28 հետ ։ Ան ատենը կնիկը ձգեց իր
սափորը , ու քաղաքը գնաց , և
29 ըսաւ մարդիկներուն . Եկէք տե-
սէք մէկ մարդ մը՝ որ ըսաւ ինծի
ամէն ինչ որ գործեր եմ . արդեօք
30 անիկա՞յ է Քրիստոսը ։ Եւ ա-
նոնք քաղաքէն ելան՝ ու անոր կու
գային ։
31 Եւ աս միջոցիս աշակերտները
իրեն կ'աղաչէին ու կ'ըսէին . Ռաբ-
32 բի՛ հաց կեր ։ Անիկայ ըսաւ ա-
նոնց . Ես կերակուր ունիմ ուտե-
33 լու՝ որ դուք չէք գիտեր ։ Ուստի
աշակերտները կ'ըսէին իրարու .
Արդեօք մէկը ատոր ուտելու բան
34 մը բերա՞ւ ։ Յիսուս ըսաւ անոնց .
Իմ կերակուրս ան է՝ որ ես զիս
խրկողին կամքը ընեմ , և անոր
35 գործը կատարեմ ։ Չէ՞ որ դուք
կ'ըսէք թէ , Ցակաւին չորս ամիս
կայ՝ որ հունձքի ատենը գայ . ահա՛
ես ձեզի կ'ըսեմ , Աչքերնիդ վեր-
ցուցէք՝ ու արտերուն նայեցէք ,
որ արդէն ճերմկած հնձուելու
36 պատրաստ են ։ Եւ ան որ կը հնձէ՝
վարձք կ'առնէ , ու յաւիտենական
կենաց համար պտուղ կը ժողվէ ,
որ սերմանողը ու հնձողը մէկտեղ
37 ուրախանան ։ Վասն զի աս բա-
նիս մէջ ճշմարիտ է ան խօսքը թէ ,
Ուրիշը կը սերմանէ , և ուրիշը կը
38 հնձէ ։ Ես ձեզ խրկեցի հնձելու ան
որ դուք չաշխատեցաք . ուրիշները
աշխատեցան , ու դուք անոնց աշ-
խատանքին մէջ մտաք ։
39 Եւ ան քաղաքէն շատ Սամարա-
ցիք իրեն հաւատացին ան կնկանը
խօսքին համար որ վկայեց ; թէ
թէ՝ Ի՛նչ որ ես գործեր էի , բոլո-
40 րը ինծի ըսաւ ։ Ու երբոր Սամա-

Յամի Տեառն 30

Ղ Թագ . ժէ . 24 ։ Ղու . թ . 52 , 53 ։ Գոր . ժ . 28 ։

Եսա . ժբ . 3 ։ խդ . 3 ։ Երեմ . բ . 13 ։ Զաք . ժգ . 1 ։ ժդ . 8 ։

Յով . զ . 35 , 59 ։

Յով . է . 38 ։

Յայտ . զ . 34 ։ Հռով . զ . 23 ։ Յօհ . ե . 20 ։

Ղու . է . 16 ։ իդ . 19 ։ Յով . զ . 14 ։ է . 40 ։

Բ Օրին . թ . 7 ։ ժբ . Օր . ժբ . 5 , 11 ։ Գ Թագ . թ . 8 ։ Բ Մն . է . 12 ։

Մաղ . ա . 11 ։ Ա Տիմ . բ . 8 ։

Դ Թագ . ժէ . 29 ։

Եսա . բ . 3 ։ Ղու . իդ . 47 ։ Հռով . թ . 4 , 5 ։

Փիլ . գ . 3 ։

Յով . ա . 17 ։

Բ Կոր . գ . 17 ։

Յհմր 29 , 39 ։

Յով . թ . 37 ։ Մատ . իզ . 63 , 64 ։ Մար . ժդ . 61 , 62 ։

Յհմր 25 ։

Յոբ . իդ . 12 ։ Յով . զ . 38 ։ ժէ . 4 ։ ժթ . 30 ։

Մատ . թ . 37 ։ Ղու . ժ . 2 ։

Դան . ժբ . 3 ։

Յհմր 29 ։

Յամի Տեառն
30

րացիք անոր եկան՝ կ'աղաչէին անոր
որ իրենց քովը կենայ . ու երկու օր
41 հոն կեցաւ ։ Եւ ալ շատերը իրեն
հաւատացին՝ իր խօսքին համար ։
42 Ու կ'ըսէին կնկանը . Ասկէ ետեւ չէ՛
թէ քու խօսքիդ համար կը հաւա-
տանք . ինչու որ *մենք մեզմէ լսե-
ցինք , և գիտենք որ ատիկայ է
ճշմարտապէս աշխարհի Փրկիչը՝
Քրիստոսը ։

*Գլ. ժէ. 8 ։ ա Յօհ. դ. 14 ։

43 Ու երկու օրէն ետեւ ելաւ անկէ՝
44 և Գալիլեա գնաց ։ Ինչու որ ՆՅի-
սուս ինքը վկայեց թէ , Մարգարէ
մը իր գաւառին մէջ պատիւ չունե-
45 նար ։ Ու երբոր Գալիլեա եկաւ ,
Գալիլեացիները զինքը ընդունե-
ցին . ՊԻնչու որ տեսած էին անոր բո-
լոր հրաշքները՝ որ ինքը ըրաւ Երու-
սաղէմի մէջ տօնին ատենը . Ըվասն
զի իրենք ալ ան տօնին գացեր էին ։

ՆՄատ. ժգ. 57 ։ Մար. զ. 4 ։ Ղու. դ. 24 ։
ՊԳլ. բ. 23 ։ գ. 2 ։
ԸբՕր. ժզ. 16 ։

46 Եւ Յիսուս նորէն եկաւ Գալի-
լեացւոց Կանայ քաղաքը , *ուր որ
ջուրը գինի ըրած էր . և հոն ազ-
նուական մէկը կար , որուն որդին
հիւանդ էր Կափառնայումի մէջ ։
47 Ասիկայ լսելով որ Յիսուս Հրէաս-
տանէն Գալիլեա եկեր է , եկաւ ա-
նոր ու կ'աղաչէր որ իջնէ և իր որ-
դին բժշկէ . ինչու որ մեռնելու վը-
48 րայ էր ։ Ան ատենը Յիսուս ըսաւ
անոր . *Թէ որ նշաններ ու հրաշք-
ներ չտեսնէք , բնաւ պիտի չհաւա-
49 տաք ։ Ազնուականը ըսաւ անոր .
Տէ՛ր՝ իջի՛ր քանի որ իմ տղաս մե-
50 ռած չէ ։ Յիսուս ըսաւ անոր .
Գնա՛ , քու որդիդ ողջ է . մարդն
ալ հաւատաց ան խօսքին որ Յի-
51 սուս իրեն ըսաւ , ու գնաց ։ Ու
երբոր կ'իջնէր , իր ծառաները
դիմաւորեցին զինքը , և աւետիս
տուին ըսելով թէ , Քու տղադ
52 ողջ է ։ Ուստի հարցուց անոնց թէ
ո՛ր ժամէն սկսաւ աղէկի դառնալ .
և ըսին իրեն . Երէկ ժամը եօթնին
53 տենդը թողուց զանիկայ ։ Ան ա-
տենը գիտցաւ անոր հայրը՝ թէ ան
ժամն էր , որ Յիսուս իրեն ըսաւ
թէ , Քու որդիդ ողջ է . ու հաւա-
54 տաց ինքը և իր բոլոր տունը ։ Աս
նորէն երկրորդ հրաշքն է որ Յի-
սուս ըրաւ , երբոր Հրէաստանէն
Գալիլեա եկաւ ։

*Գլ. բ. 1 , 11 ։
*ա Կոր. ա. 22 ։

ԳԼ. Ե

1 Յիսուս երսունութը տարիէ 'ի վեր հիւանդ եղող մարդը կը բժշկէ շաբաթ օրը ։ 10 Հրէայք ասոր վրայով տրտունջ կ'ընեն , ու կը հալածեն զՔրիստոս ։ 17 Ան ալ իր անձին համար պատասխան կու տայ Հրէաներուն , ու զանոնք կը յանդիմանէ . և իր Հօրը , 32 ու Յովհաննէսին , 36 և իր գործքերուն , 39 ու Սուրբ Գրոց վկայութիւններովը՝ իր ո՛վ ըլլալը կը յայտնէ ։

*Ղև. իգ. 2 ։ բ Օր. ժզ. 1 ։ Գլ. բ. 13 ։

1 *Ասկէ ետեւ Հրէից տօն էր . և Յի-
2 սուս Երուսաղէմ ելաւ ։ Ու



Յամի Տեառն
31

Երուսաղէմի մէջ *Ոչխարաց դրանը
քով աւազան մը կայ , որ Եբրա-
յեցերէն Բեթհեզդա կ'ըսուի , որ
3 հինգ սրահ ունի ։ Ասոնց մէջ
խիստ շատ հիւանդներ պառկած
էին , կոյրեր՝ կաղեր՝ չորցածներ ,
որոնք կը սպասէին ջուրին խառ-
4 նուելուն ։ Վասն զի հրեշտակ մը
ժամանակ ժամանակ աւազանը
կ'իջնէր , ու ջուրերը կը խառնէր .
և ո՛վ որ ջուրին խառնուելէն ետեւ
պինտ առաջ անոր մէջը կը մտնէր ,
կը բժշկուէր՝ ինչ հիւանդութիւն
5 որ ունենար ։ Եւ հոն մէկ մարդ մը
կար , որ երսունութը տարիէ 'ի
վեր հիւանդութիւն մը ունէր ։
6 Յիսուս երբոր տեսաւ զանիկայ՝ որ
ինկած պառկած էր , ու գիտցաւ
որ շատ ժամանակէ 'ի վեր է , ըսաւ
անոր . Կ'ուզե՞ս առողջանալ ։
7 Հիւանդը պատասխան տուաւ ա-
նոր . Տէ՛ր՝ մարդ մը չունիմ , որ
երբ ջուրերը խառնուին՝ զիս աւա-
զանը ձգէ . հապա քանի որ ես
ծանր կը շարժիմ , ինծմէ առաջ
8 ուրիշ մը կ'իջնէ ։ Յիսուս ըսաւ
անոր . *Ելի՛ր մահիճդ ա՛ռ՝ ու քա-
9 լէ՛ ։ Եւ իսկոյն մարդը առողջա-
ցաւ , ու իր մահիճը վերցնելով
կը քալէր . *Ու ան օրը շաբաթ էր ։
10 Ան ատենը Հրէաները ըսին բժըշ-
կուած մարդուն . Շաբաթ է , *Ու
արժան չէ որ մահիճդ վերցնես ։
11 Պատասխան տուաւ անոնց՝ ու ը-
սաւ . Ան որ զիս բժշկեց՝ ինքը ին-
ծի ըսաւ . Մահիճդ ա՛ռ՝ ու քալէ ։
12 Ուստի հարցուցին անոր . Ո՞վ է
ան մարդը որ քեզի ըսաւ , Մահիճդ
13 ա՛ռ՝ ու քալէ ։ Եւ բժշկուողը չէր
գիտեր թէ ո՛վ է ան . ինչու որ Յի-
սուս մէկդի քաշուեցաւ՝ ան տեղը
14 բազմութիւն ըլլալուն համար ։ Ան-
կէ ետքը Յիսուս զանիկայ տաճա-
րին մէջ գտնելով՝ ըսաւ անոր .
Ահա՛ բժշկուեցար , Նալ մեղք մի՛
գործեր , որ ալ աւելի չար բան մը
15 չպատահի քեզի ։ Գնաց մարդը ,
ու Հրէաներուն պատմեց , թէ Յի-
սուսն էր որ զինքը բժշկեց ։
16 Եւ ասոր համար Հրէաները կը
հալածէին Յիսուսը , և կը փընտ-
ռէին զանիկայ սպաննել , որ աս
17 բաները շաբաթ օրը կ'ընէր ։ Եւ
Յիսուս պատասխան տուաւ անոնց .
*Իմ Հայրս մինչև հիմա կը գործէ ,
18 ես ալ կը գործեմ ։ *Ասոր համար՝
ալ աւելի կը փնտռէին Հրէաները
զանիկայ սպաննել . վասն զի չէ
թէ միայն շաբաթ օրը կը լուծէր ,
հապա նաև զԱստուած իր Հայրը
կ'անուանէր , *Ու այսպէս ինքզին-
քը Աստուծոյ հաւասար կ'ընէր ։
19 Իսկ Յիսուս պատասխան տուաւ ու

*Նեեմ. գ. 1 ։ ժբ. 39 ։
*Մատ. թ. 6 ։ Մար. բ. 11 ։ Ղու. ե. 24 ։
*Գլ. թ. 14 ։
*Յեր. ի. 10 ։ Նեեմ. ժգ. 19 ։ Երեմ. ժէ. 21 , 22 ։ Մատ. ժբ. 2 ։ Մար. բ. 24 ։ գ. 4 ։ Ղու. զ. 2 ։ ժգ. 14 ։
*Մատ. ժբ. 45 ։ Գլ. ը. 11 ։
*Գլ. թ. 4 ։ ժդ. 10 ։
*Գլ. է. 20 ։
*Գլ. ժ. 30 , 33 ։ Փիլ. բ. 6 ։

Յամի Տեառն 31

ժ Հմր. 30 ։ Գղ. ը. 25 ։ ի. 4 ։ ժը. 49 ։ ժդ. 10 ։
ի Մատ. գ. 17 ։ Գղ. գ. 35 ։ Բ Պետ. ա. 17 ։
լ Ղու. է. 14 ։ ը. 54 ։ Գղ. ժա. 25, 43 ։
խ Մատ. ժա. 27 ։ իը. 18 ։ Հմր 27 ։ Գղ. գ. 35 ։ ժէ. 2 ։ Գործ. ժէ. 31 ։ Ա Պետ. դ. 5 ։
ծ Ա Յոհ. բ. 23 ։
կ Գղ. գ. 16, 18 ։ զ. 40, 47 ։ ը. 51 ։ ի. 31 ։
հ Ա Յոհ. գ. 14 ։
ձ Հմր 28 ։ Եփե. բ. 1, 5 ։ ե. 14 ։ Կող. բ. 13 ։
ղ Հմր 22 ։ Գործ. ժ. 42 ։ ժէ. 31 ։
ճ Դան. է. 13, 14 ։
մ Ես. իզ. 19 ։ Ա Կոր. ժե. 52 ։ Ա Թես. դ. 15 ։
յ Դան. ժբ. 2 ։ Մատ. իե. 32, 33, 46 ։
ն Հմր 19 ։
շ Մատ. իզ. 39 ։ Գղ. դ. 34 ։ զ. 38 ։
* Ո[illegible] Հօրը
ո Գղ. ը. 14 ։ Յայտ. գ. 14 ։
չ Մատ. գ. 17 ։ ժէ. 5 ։ Գղ. ը. 18 ։ Ա Յոհ. ե. 6, 7, 9 ։
պ Գղ. ա. 15, 19, 27, 32 ։

ըսաւ անոնց . Ճշմարիտ ճշմարիտ
կ'ըսեմ ձեզի , ժՈրդին ինքիրմէն
բան մըն ալ չկրնար ընել . միայն
թէ ինչ որ տեսնէ որ Հայրը կ'ը-
նէ . վասն զի ինչ որ անիկայ կ'ընէ ,
նմանապէս Որդին ալ նոյնը կ'ընէ ։
20 Ինչու որ իՀայրը կը սիրէ Որդին ,
և ամէն բանը կը ցուցընէ անոր՝
ինչ որ ինքը կ'ընէ . և ասոնցմէ
ալ աւելի մեծ գործքեր պիտի ցու-
ցընէ անոր , որպէս զի դուք զար-
21 մանաք ։ Վասն զի ինչպէս որ Հայ-
րը մեռելները կը յարուցանէ՝ ու
կենդանի կ'ընէ , լանանկ ալ Որ-
դին՝ որոնք որ կ'ուզէ կը կենդանա-
22 ցընէ ։ Քանզի Հայրը մէկը չդա-
տեր , խհապա ամէն դատաստանը
23 Որդիին տուաւ . Որ ամէնը պա-
տուեն Որդին , ինչպէս որ Հայրը
կը պատուեն . ծան որ Որդին չպա-
տուեր , զանիկայ ղրկող Հայրը
24 չպատուեր ։ Ճշմարիտ ճշմարիտ
կ'ըսեմ ձեզի , թէ կան որ իմ խօս-
քըս մտիկ կ'ընէ , և կը հաւատայ
անոր՝ որ զիս ղրկեց . յաւիտենա-
կան կեանք ունի , ու դատապար-
տութեան տակ չիյնար , հհապա
մահուանէ դէպ 'ի կեանք անցած
25 է ։ Ճշմարիտ ճշմարիտ կ'ըսեմ
ձեզի , որ ժամանակ պիտի գայ՝ և
ալ հիմա է , ձոր ան ատենը մեռել-
ները պիտի լսեն Աստուծոյ Որդւոյն
ձայնը . և անոնք որ կը լսեն , պի-
26 տի ապրին ։ Վասն զի ինչպէս որ
Հայրը իր անձին մէջը կեանք ունի ,
անանկ ալ Որդիին տուաւ որ իր
27 անձին մէջը կեանք ունենայ . ղԵւ
դատաստան ընելու ալ իշխանու-
թիւն տուաւ անոր , ճքանզի անի-
28 կայ Որդի մարդոյ է ։ Ասոր վրայ
մի՛ զարմանաք . ինչու որ ժամա-
նակ պիտի գայ՝ որ բոլոր գերեզ-
մաններու մէջ եղողները անոր ձայ-
29 նը պիտի լսեն , մՈւ դուրս պիտի
գան . յանոնք որ բարի գործեր են ,
կենաց յարութեան համար , և ա-
նոնք որ չար գործեր են , դատա-
պարտութեան յարութեան հա-
30 մար ։ նԵս ինքիրմէս բան մը չեմ
կրնար ընել . ինտոր կը լսեմ՝ ա-
նանկ կը դատեմ , և իմ դատաս-
տանս արդար է . ինչու որ շես իմ
կամքս չեմ փնտռեր , հապա *անոր
31 կամքը որ զիս ղրկեց ։ ոԹէ որ ես
ինծի համար վկայեմ , իմ վկա-
32 յութիւնս ճշմարիտ չէ ։ չՈւրիշ
մըն է որ ինծի համար կը վկայէ .
և ես գիտեմ որ ճշմարիտ է ան
վկայութիւնը՝ որ ինքը ինծի համար
33 վկայեց ։ Դուք Յովհաննէսին ղրր-
կեցիք , պԵւ ինքը ճշմարտութեա-
34 նը վկայեց ։ Բայց ես չէ՛ թէ մար-
դոցմէ վկայութիւն կ'առնեմ . հա-
պա աս բաները կ'ըսեմ որ դուք
35 փրկուիք ։ Անիկայ ճրագ մըն էր
որ կը վառէր , ջու լոյս կու տար .
ռԵւ դուք քիչ մը ատեն ուզեցիք ա-
36 նոր լուսովը ուրախանալ ։ սԲայց ես
Յովհաննէսին վկայութենէն ալ մեծ
վկայութիւն ունիմ , քանզի վան
գործքերը որ Հայրը ինծի տուաւ
որ անոնք կատարեմ , ան նոյն
գործքերը որ ես կը գործեմ՝ ինծի
համար կը վկայեն թէ Հայրը զիս
37 ղրկեց ։ Ու Հայրը որ զիս ղրկեց ,
տԻնքը վկայեց ինծի համար . դուք
բնաւ անոր ձայնը չլսեցիք , րոչ
38 ալ անոր կերպարանքը տեսաք . Եւ
ոչ անոր խօսքը ձեր մէջը բնակած
ունիք . քանզի ան որ ինքը ղրկեց ,
39 դուք անոր չէք հաւատար ։ ցԳիր-
քերը քննեցէք . ինչու որ դուք
անոնցմով կը սեպէք յաւիտենա-
կան կեանքը ունենալ . ւԵւ բուն
անոնք են որ ինծի համար կը վկա-
40 յեն . փԵւ դուք չէք ուզեր ինծի
41 գալ , որ կեանք ունենաք ։ քԵս
մարդոցմէ փառք չեմ առներ ։
42 Բայց գիտեմ ձեզ որ Աստուծոյ
43 սէրը մէջերնիդ չունիք ։ Ես իմ
Հօրս անունովը եկայ , ու զիս չէք
ընդունիր . թէ որ ուրիշ մէկը իր
անունովը գայ , անիկայ պիտի
44 ընդունիք ։ օԴուք ինտո՞ր կրնաք
հաւատալ , որ իրարմէ փառք կ'առ-
նէք . ֆԵւ ան փառքը որ մէկ Աս-
45 տուծմէն է , չէք փնտռեր ։ Մի՛
կարծէք թէ ես ձեզի համար ամ-
բաստանութիւն պիտի ընեմ Հօրը .
աԿայ մէկը որ ձեզի համար ամբաս-
տանութիւն կ'ընէ , Մովսէսը՝ ո-
46 րուն դուք յուսացած էք ։ Վասն
զի թէ որ դուք Մովսէսին հաւա-
տայիք , ինծի ալ պիտի հաւատա-
յիք . բինչու որ անիկայ ինծի հա-
47 մար գրեց ։ Բայց թէ որ անոր
գրածներուն չէք հաւատար , իմ
խօսքերուս ինտո՞ր պիտի հաւա-
տաք ։

## ԳԼ. Զ

1 Քրիստոս հինգ հազար հոգի կը կերակրէ հինգ հացով ու երկու ձուկով . 15 աս բանիս վրայ մարդիկ կ'ուզեն թագաւոր ընել զանիկայ . 16 բայց Յիսուս անոնց քովէն ետ կը քաշուի , ու ծովուն վրայ քալելով՝ իր աշակերտներուն կ'երթայ . 26 կը յանդիմանէ իր բոլորտիքը դիզուողները , ու ամէն մարմնաւոր շահու համար իր խօսքը մտիկ ընողները . 32 կը ցուցընէ թէ ինքը հոգևոր կերակուր է հաւատացեալներուն ։ 66 Շատ աշակերտներ իրմէն կը զատուին ։ 68 Պետրոս կը դաւանի զՅիսուս ։ 70 Յուդան սատանայ կ'անուանէ ։

1 աԱս բաներէն ետքը Յիսուս Գա-
լիլեայի՝ այսինքն Տիբերիայի
2 ծովուն անդիի կողմը գնաց . Եւ
անոր ետևէն շատ ժողովուրդ կ'եր-
թար . ինչու որ կը տեսնէին ան
հրաշքները՝ որ հիւանդներուն վրայ

Յամի Տեառն 31

ջ Բ Պետ. ա. 19 ։
ռ Մատ. ժգ. 20 ։ իա. 26 ։ Մար. զ. 20 ։
ս Ա Յոհ. ե. 9 ։
վ Գղ. գ. 2 ։ ժ. 25 ։ ժե. 24 ։
տ Մատ. գ. 17 ։ ժէ. 5 ։ Գղ. զ. 27 ։ ը. 18 ։
ր Բ Օր. դ. 12 ։ Գղ. ա. 18 ։ Ա Տիմ. ա. 17 ։ Ա Յոհ. դ. 12 ։
ց Ես. ը. 20 ։ լդ. 16 ։ Ղու. ժզ. 29 ։ Հմր 46 ։ Գործ. ժէ. 11 ։
ւ Բ Օր. ժը. 15, 18 ։ Ղու. իդ. 27 ։ Գղ. ա. 45 ։
փ Գղ. ա. 11 ։ գ. 19 ։
ք Հմր 34 ։ Ա Թես. բ. 6 ։
օ Գղ. ժբ. 43 ։
ֆ Հռով. բ. 29 ։
ա Հռով. բ. 12 ։
բ Ծն. գ. 15 ։ ժբ. 3 ։ ժը. 18 ։ իբ. 18 ։ Իսթ. 10 ։ Բ Օր. ժը. 15, 18 ։ Գղ. ա. 45 ։ Գործ. իզ. 22 ։

Յա. Տ. 32

ա Մատ. ժդ. 13 ։ Մար. զ. 32 ։ Ղու. թ. 10, 12 ։

Յամի Տեառն 32

բ Ղկ. իդ. 3, 7. բ Օր. ժզ. 1. Գէ. բ. 13. ե. 1. գ Մատ. ժդ. 14. Մար. զ. 35. Ղու. թ. 12. դ Տես Թուոց. ժա. 21, 22. ե Դ Թագ. դ. 43. զ Ծն. խթ. 10. բ Օր. ժը. 15, 18. Մատ. ժա. 8. Գէ. ա. 21. դ. 19. 25. է. 40. է Մատ. ժդ. 23. Մար. զ. 47.

3 կ'ընէր ։ Եւ Յիսուս լեռը ելաւ ,
ու հոն նստաւ իր աշակերտներուն
4 հետ մէկտեղ ։ բ Եւ Հրէից զատկի
տօնը մօտ էր ։
5 գ Յիսուս երբոր իր աչքերը վեր
վերցուց , ու տեսաւ որ շատ ժողո֊
վուրդ կու գար իրեն , ըսաւ Փի֊
լիպպոսին . Ո՞ւսկից հաց ծախու
6 առնենք որ ասոնք ուտեն ։ ( Եւ
աս կ'ըսէր զանիկայ փորձելու հա֊
մար . քանզի ինքը գիտէր ինչ
7 պիտի ընէր ։ ) Փիլիպպոս պա֊
տասխան տուաւ անոր . դ Երկու
հարիւր դահեկանի հաց ասոնց
հերիք չէ , որ ամէն մէկը քիչ մը
8 առնէ ։ Իր աշակերտներէն մէկը՝
Սիմոն Պետրոսին եղբայրը Անդ֊
9 րէաս՝ ըսաւ իրեն . Հոս մէկ պա֊
տանի մը կայ , որ հինգ գարեղէն
հաց ու երկու ձուկ ունի . ե բայց
անոնք ի՞նչ պիտի ըլլան այդչափ
10 մարդոց ։ Իսկ Յիսուս ըսաւ .
Նստեցուցէ՛ք ատ մարդիկը . և ան
տեղը շատ խոտ կար , ու մարդիկը
նստան թուով հինգ հազարի չափ ։
11 Եւ Յիսուս հացերը առաւ ու գո֊
հացաւ , և աշակերտներուն բաժ֊
նեց . աշակերտներն ալ նստողնե֊
րուն . նոյնպէս ալ ձուկերէն՝ որչափ
12 որ ուզեցին ։ Ու երբոր կշտացան ,
ըսաւ իր աշակերտներուն . Ժող֊
վեցէ՛ք աւելցած կտորուանքները՝
13 որ բան մը չկորսուի ։ Ուստի ժող֊
վեցին , և տասուերկու կողով լե֊
ցուցին ան հինգ գարեղէն հացերէն
մնացած կտորուանքները , որ ու֊
14 տողներէն աւելցաւ ։ Իսկ մար֊
դիկը երբոր Յիսուսին ըրած հը֊
րաշքը տեսան , կ'ըսէին թէ , Ա֊
սիկայ է ճշմարտապէս ան զմար֊
15 գարէն՝ որ աշխարհ պիտի գար ։ Եւ
Յիսուս գիտնալով որ պիտի գան
զինքը յափշտակեն՝ որ զինքը թա֊
գաւոր ընեն , նորէն մինակ լեռը
16 գնաց ։ է Ու երբոր իրիկուն եղաւ ,
իր աշակերտները ծովեզերքը իջան .
17 Եւ նաւը մտնելով՝ ծովուն մէկալ
կողմը Կափառնայում կ'երթային .
և արդէն մութը կոխեր էր , ու
Յիսուս դեռ իրենց եկած չէր .
18 Ծովն ալ հովին սաստիկ փչելէն
19 տակնուվրայ կ'ըլլար ։ Ու երբոր
թի քաշելով քսանուհինգ կամ
երսուն ասպարէզի չափ գացին ,
տեսան Յիսուսը որ ծովուն վրայէն
քալելով՝ նաւուն կը մօտենար , ու
20 վախցան ։ Բայց ինքը ըսաւ ա֊
21 նոնց . Ես եմ՝ մի՛ վախնաք ։ Ան
ատենը ուզեցին զանիկայ նաւը առ֊
նել . և շուտ մը նաւը ան երկիրը
հասաւ՝ ուր որ կ'երթային ։
22 Հետևեալ օրը՝ ժողովուրդը որ
ծովուն մէկալ կողմն էր , և տեսկր
էր որ ուրիշ նաւակ չկար հոն ան
մէկէն 'ի զատ՝ որուն մէջ անոր ա֊
շակերտները մտեր էին . և որ Յի֊
սուս իր աշակերտներուն հետ նա֊
ւակը մտած չէր , հապա մինակ
անոր աշակերտները գացեր էին .
23 ( Բայց Տիբերիայէն ուրիշ նաւակ֊
ներ եկան ան տեղին մօտ՝ ուր որ
Տէրոջը գոհանալովը հացը կերեր
24 էին . ) Ան ատենը ժողովուրդը
տեսնելով թէ ո՛չ Յիսուսը հոն է ,
ո՛չ ալ անոր աշակերտները , իրենք
ալ նաւերը մտան՝ ու եկան Կա֊
փառնայում Յիսուսը փնտռելու ։
25 Ու երբոր անիկայ ծովուն մէկալ
դին գտան , ըսին անոր . Ռաբբի՝
26 ե՞րբ եկար դուն հոս ։ Յիսուս պա֊
տասխան տուաւ անոնց՝ և ըսաւ .
Ճշմարիտ ճշմարիտ կ'ըսեմ ձեզի .
Դուք զիս կը փնտռէք՝ չէ՛ թէ անոր
համար որ հրաշքներ տեսաք , հա֊
պա անոր համար որ հացերէն կերաք
27 ու կշտացաք ։ Գործեցէք՝
չէ՛ թէ կորստական կերակուրին
համար , ըհապա ան կերակուրին
համար՝ որ յաւիտենական կենաց
մէջ կը մնայ , որ անիկայ Որդին
մարդոյ ձեզի պիտի տայ . թ ինչու որ
Հայր Աստուած զանիկայ կնքեց ։
28 Ան ատենը ըսին անոր . Ի՞նչ ընենք՝
որ Աստուծոյ գործքերը գործենք ։
29 Պատասխան տուաւ Յիսուս ու ը֊
սաւ անոնց . ժ Աս է Աստուծոյ գոր֊
ծը , որ անոր խրկածին հաւատաք ։
30 Ըսին անոր . ի Բայց դուն ի՞նչ նը֊
շան կ'ընես՝ որ տեսնենք ու քեզի
հաւատանք . ի՞նչ կը գործես ։
31 լ Մեր հայրերը անապատին մէջ մա֊
նանան կերան , ինչպէս որ գրուած
է . խ Երկինքէն հաց տուաւ անոնց՝
32 որ ուտեն ։ Եւ Յիսուս ըսաւ ա֊
նոնց . Ճշմարիտ ճշմարիտ կ'ըսեմ
ձեզի , թէ Մովսէս չտուաւ ձեզի
երկնաւոր հացը , բայց իմ Հայրս
կու տայ ձեզի ճշմարիտ երկնաւոր
33 հացը ։ Ինչու որ Աստուծմէ պարգևած
հացը ան է՝ որ երկինքէն կ'իջնէ ,
ու աշխարհիս կեանք կու տայ ։
34 Ուստի ծ ըսին անոր . Տէ՛ր՝ ամէն ա֊
35 տեն ատ հացը մեզի տո՛ւր ։ Եւ
Յիսուս ըսաւ անոնց . կ Ես եմ կե֊
նաց հացը . հ ան որ ինծի կու գայ ,
երբեք պիտի չանօթենայ . և ան որ
ինծի կը հաւատայ , պիտի չծարա֊
36 ւի ։ ձ Բայց ես ձեզի ըսի , որ դուք
զիս տեսաք ալ՝ ու չէք հաւատար ։
37 ղ Ան ամէնը որ Հայրը ինծի կու
տայ , ինծի պիտի գայ . ճ և ան որ
ինծի կու գայ , բնաւ դուրս պիտի
38 չհանեմ ։ Ինչու որ ես երկինքէն
իջայ , մ չէ՛ թէ իմ կամքս ընելու ,
յ հապա անոր կամքը՝ որ զիս խրկեց ։
39 Եւ զիս խրկող Հօրը կամքը աս է .

Յամի Տեառն 32

ը Հմր 35. Գէ. դ. 14. թ Մատ. գ. 17. ժէ. 5. Մար. ա. 11. թ. 6. Ղու. գ. 22. թ. 35. Գէ. ա. 33. ե. 37. է. 18. Գոր. բ. 22. բ Պետ. ա. 17. ժ ա Յօհ. գ. 23. ի Մատ. ժբ. 38. ժզ. 1. Մար. ը. 11. ա Կոր. ա. 22. լ Ել. ժզ. 15. Թուոց. ժա. 7. Նեեմ. թ. 15. ա Կոր. ժ. 3. խ Սաղ. հը. 24, 25. ծ Տես Գէ. դ. 15. կ Հմր 48, 59. հ Գէ. դ. 14. է. 37. ձ Հմր 26, 65. ղ Հմր 45. ճ Մատ. իդ. 24. Գէ. ժ. 28, 29. բ Տիմ. բ. 19. ա Յօհ. բ. 19. մ Մատ. իզ. 39. Գէ. ե. 30. յ Գէ. դ. 34.

Յամի Տեառն
32

ո Գլ. Ժ. 28։ ԺԷ. 12։ ԺԸ. 9։
ն Հմր 27. 47. 55։ Գլ. Գ. 15. 16։ Դ. 14։
օ Մատ. ԺԳ. 55։ Մար. Զ. 3։ Ղու. Դ. 22։
չ Երգ. Ա. 4։ Հմր 66։
պ Ես. ԾԴ. 13։ Երեմ. ԼԱ. 34։ Միք. Դ. 2։ Եբր. Ը. 10։ Ժ. 16։
ջ Հմր 37։
ռ Գլ. Ա. 18։ Ե. 37։
ս Մատ. ԺԱ. 27։ Ղու. Ժ. 22։ Գլ. Ա. 18։ Է. 29։ Ը. 19։
վ Գլ. Գ. 16. 18. 36։ Հմր 40։
տ Հմր 33. 35։
ր Հմր 31։
ց Հմր 51. 59։
ւ Գլ. Գ. 13։
փ Եբր. Ժ. 5. 10։
ք Գլ. Է. 43։ Թ. 16։ Ժ. 19։
օ Գլ. Գ. 9։
ֆ Մատ. ԻԶ. 26. 28։
ա Հմր 27. 40. 64։ Գլ. Դ. 13. 14։
բ Ա Յովհ. Գ. 24։ Դ. 15. 16։

որ, ոան ամէնը որ ինքը ինծի
տուաւ՝ չկորսնցընեմ անկէ, հա-
պա անոր յարութիւն առնել տամ
40 վերջին օրը ։ Քանզի զիս խըր-
կողին կամքը աս է, որ նան ամէնը
որ կը տեսնէ Որդին՝ և կը հաւա-
տայ անոր, յաւիտենական կեանք
ունենայ. ես ալ անոր յարութիւն
առնել տամ վերջին օրը ։
41 Ուստի Հրէաները տրտունջ կ'ը-
նէին իրեն համար, ինչու որ ըսաւ
թէ, Ես եմ երկինքէն իջած հացը.
42 Եւ կ'ըսէին. օԱսիկայ Յովսէփին
որդին Յիսուսը չէ՞, որուն հայրը
ու մայրը մենք կը ճանչնանք. ու-
րեմն ի՞նչպէս կ'ըսէ ասիկայ թէ,
43 Ես երկինքէն իջայ ։ Պատասխան
տուաւ Յիսուս՝ ու ըսաւ անոնց.
44 Տրտունջ մի՛ ընէք մէջերնիդ ։ չՄէ-
կը չկրնար ինծի գալ, թէ որ զիս
խրկող Հայրը անիկայ չքաշէ. ու
ես անոր յարութիւն առնել պիտի
45 տամ վերջին օրը ։ պՄարգարէից
մէջ գրուած է. Եւ ամէնքն ալ
Աստուծմէ սորված պիտի ըլլան.
ջան ամէնը որ Հօրմէն կը լսէ ու
46 կը սորվի, ինծի կու գայ ։ ռՉէ՛
թէ մէկը Հայրը տեսած է, սեթէ
ոչ ան որ Աստուծմէն է, անիկայ
47 Հայրը տեսած է ։ Ճշմարիտ ճըշ-
մարիտ կ'ըսեմ ձեզի, թէ վան որ
ինծի կը հաւատայ, յաւիտենական
48 կեանք ունի ։ տԵս եմ կենաց հա-
49 ցը ։ րՁեր հայրերը անապատին
մէջ մանանան կերան, ու մեռան ։
50 ցԱս է ան հացը՝ որ երկինքէն կ'իջ-
նէ, որ եթէ մէկը ասկէ ուտէ,
51 պիտի չմեռնի ։ Ես եմ կենդանի
52 հացը՝ ւոր երկինքէն իջայ ։ Թէ որ
մէկը աս հացէն ուտէ, յաւիտեան
պիտի ապրի. փև ան հացը որ ես
պիտի տամ՝ իմ մարմինս է, որ
ես պիտի տամ աշխարհիս կենացը
համար ։
53 քԱսոր վրայ Հրէաները իրարու
հետ կը վիճէին՝ ու կ'ըսէին. օԻն-
տո՞ր կրնայ ասիկայ իր մարմինը մե-
54 զի տալ ուտելու ։ Իսկ Յիսուս
ըսաւ անոնց. Ճշմարիտ ճշմարիտ
կ'ըսեմ ձեզի, ֆթէ որ Որդւոյ մար-
դոյ մարմինը չուտէք, և անոր ա-
րիւնը չխմէք, ձեր անձերուն մէջը
55 կեանք չէք ունենար ։ աՈվ որ իմ
մարմինս ուտէ, և իմ արիւնս խմէ,
յաւիտենական կեանք կ'ունենայ,
ու ես անոր յարութիւն առնել
56 պիտի տամ վերջին օրը ։ Ինչու
որ իմ մարմինս ճշմարիտ կերակուր
է, և իմ արիւնս ճշմարիտ ըմպելիք
57 է ։ Ան որ իմ մարմինս կ'ուտէ,
և իմ արիւնս կը խմէ, բանիկայ
իմ ներսի դիս կը բնակի՝ ու ես ա-
58 նոր ներսի դին ։ Ինչպէս որ կեն-
դանի Հայրը զիս խրկեց, ու ես
կենդանի եմ Հօրը ձեռքովը, այս-
պէս ալ ան որ զիս կ'ուտէ, ինքն
ալ իմ ձեռքովս կենդանի կը մնայ ։
59 գԱս է ան հացը՝ որ երկինքէն ի-
ջած է. չէ՛ թէ ինչպէս որ հայրեր-
նիդ մանանան կերան՝ ու մեռան.
ով որ աս հացը ուտէ, յաւիտեան
պիտի ապրի ։
60 Աս բաները զրուցեց ժողովարա-
նին մէջը՝ երբոր Կափառնայումի
մէջ կը սորվեցընէր ։
61 դՈւ աշակերտներէն շատերը երբ-
որ լսեցին, ըսին. Խիստ է աս
խօսքը, ո՞վ կրնայ ատոր մտիկ ը-
62 նել ։ Յիսուս երբոր ինքնիրենը
հասկըցաւ, որ իր աշակերտները
ան բանին համար տրտունջ կ'ընեն,
ըսաւ անոնց. Ատիկայ ձեզ կը գայ-
63 թակղեցընէ՞ ։ եՀապա ի՞նչ պիտի
ըլլայ, թէ որ տեսնէք Որդին
մարդոյ որ ելլէ ուր տեղ որ առաջ
64 էր ։ զՀոգին է կենդանի ընողը,
մարմինը շահ մը չըներ. ան խօս-
քերը որ ես ձեզի էխօսեցայ, հոգի
65 ու կեանք են ։ ըԲայց ձեր մէջէն
կան ոմանք որ չեն հաւատար. ին-
չու որ թՅիսուս սկիզբէն գիտէր՝ թէ
ով են անոնք որ չեն հաւատար, և
ով է ան որ զինքը պիտի մատնէ.
66 Ու կ'ըսէր. ժԱսոր համար ձեզի ը-
սի, որ մէկը չկրնար ինծի գալ,
թէ որ իմ Հօրմէս տրուած չըլլայ
անոր ։
67 իԱս պատճառով իր աշակերտնե-
րուն շատերը ետ գացին, և ալ իր
68 հետը չէին պտըտեր ։ Ան ատե-
նը Յիսուս տասուերկուքին ըսաւ.
Միթէ դուք ալ կ'ուզէ՞ք երթալ ։
69 Սիմոն Պետրոս պատասխան տուաւ
անոր. Տէ՛ր՝ որո՞ւ պիտի երթանք.
լդուն յաւիտենական կենաց խօս-
70 քեր ունիս. խԵւ մենք հաւատա-
ցինք ու գիտցանք՝ թէ դուն ես
Քրիստոսը ծԱստուծոյ Որդին ։
71 Յիսուս պատասխան տուաւ անոնց.
կԵս ձեզ տասուերկուքդ չընտրեցի՞,
հու ձեզմէ մէկը սատանայ է ։
72 Աս կ'ըսէր Իսկարիովտացի Սիմո-
նեան Յուդային համար. ինչու որ
անիկայ էր, որ զինքը պիտի մատ-
նէր, ու տասուերկուքէն մէկն էր ։

Յամի Տեառն
32

գ Հմր 49. 50. 51։
դ Հմր 67։ Մատ. ԺԱ. 6։
ե Գլ. Գ. 13։ Մար. ԺԶ. 19։ Գործ. Ա. 9։ Եփես. Դ. 8։
զ Բ Կոր. Գ. 6։
է Ոմանք՝ կը խօսիմ.
ը Հմր 36։
թ Գլ. Բ. 24. 25։ ԺԳ. 11։
ժ Հմր 44. 45։
ի Հմր 61։
լ Գործ. Ե. 20։
խ Մատ. ԺԶ. 16։ Մար. Ը. 29։ Ղու. Թ. 20։ Գլ. Ա. 49։ ԺԱ. 27։
ծ Ոմանք՝ կենդանի Աստուծոյ
կ Ղու. Զ. 13։
հ Գլ. ԺԳ. 27։

## ԳԼ. Է

1 Յիսուս կը յանդիմանէ իր ազգականներուն փառասիրութիւնը և յանդգնութիւնը. 10 Գալիլեայէն Երուսաղէմ կ'ելլէ տաղաւարահարաց տօնին. 14 տաճարին մէջ կը սորվեցընէ. 40 Ժողովրդոց զանազան կարծիքները Քրիստոսի վրայով ։ 45 Փարիսեցիք կը բարկանան իրենց սպասաւորներուն՝ զանիկայ չբռնելնուն համար, և կը յանդիմանեն Նիկոդեմոսը՝ որ Յիսուսի կողմը կը բռնէր ։

1 Եւ աս բաներէն ետև Յիսուս Գա-
լիլեայի մէջ կը պտըտէր. ին-

Յամ Տեառն 32

չու որ չէր ուզեր Հրէաստանի մէջ
պտըտիլ, վասն զի Հրէաները զին-
քը սպաննել կ'ուզէին ։
2 Եւ Հրէաներուն տաղաւարա-
3 հարաց տօնը մօտ էր ։ Ուստի իր
եղբայրները ըսին իրեն . Ելի՛ր աս-
կէ՝ ու Հրէաստան գնա , որ քու
աշակերտներդ ալ տեսնեն քու
4 գործքերդ որ կ'ընես . Ինչու որ
մէկը չկայ որ ծածկաբար բան մը
ընէ , և ինքը յայտնի ըլլալ ուզէ .
Թէ որ դուն աս բաները կ'ընես ,
ինքզինքդ աշխարհին յայտնէ ։
5 Քանզի իր եղբայրներն ալ չէին
6 հաւատար իրեն ։ Իսկ Յիսուս ը-
սաւ անոնց . Իմ ժամանակս դեռ
հասած չէ . բայց ձեր ժամանակը
7 միշտ պատրաստ է ։ Աշխարհը
ձեզ չկրնար ատել , բայց զիս կ'ա-
տէ . Ինչու որ ես անոր վրայով
կը վկայեմ՝ թէ իր գործքերը չար
8 են ։ Դուք ելէք աս տօնիս . ես
դեռ չեմ ելլեր աս տօնիս , ինչու
որ իմ ժամանակս դեռ լցուած չէ ։
9 Աս ըսելով անոնց , ինքը Գալիլեա
10 մնաց ։ Բայց երբոր իր եղբայր-
ները ելան , ետքը ինքն ալ ելաւ
տօնին , չէ թէ յայտնի՝ հապա
գաղտուկ կերպով մը ։
11 Եւ Հրէաները տօնին ատենը կը
փնտռէին զինքը՝ ու կ'ըսէին . Ո՞ւր
12 է անիկայ ։ Եւ ժողովուրդին մէջ
շատ շշնջիւն կար անոր վրայով .
Ոմանք կ'ըսէին թէ , Աղէկ մարդ
է . ուրիշները կ'ըսէին , Ոչ , հապա
13 ժողովուրդը կը մոլորցընէ ։ Սա-
կայն մէկը անոր վրայով համար-
ձակ չէր խօսեր՝ Հրէաներուն վա-
խէն ։
14 Իսկ երբոր տօնը կէս եղաւ , Յի-
սուս տաճարը ելաւ՝ ու կը սորվե-
15 ցընէր ։ Եւ Հրէաները կը զար-
մանային ու կ'ըսէին . Ինտո՞ր ասի-
կայ գիրքերը գիտէ , որ սորված
16 չէ ։ Յիսուս պատասխան տուաւ
անոնց՝ ու ըսաւ . Իմ վարդապե-
տութիւնս իմս չէ , հապա զիս
17 խրկողինն է ։ Եթէ որ մէկը կ'ուզէ
անոր կամքը ընել , պիտի գիտնայ
այս վարդապետութեանս համար՝
թէ արդեօք Աստուծմէ՞ է , թէ ես
18 ինքիրմէս կը խօսիմ ։ Ան որ ինք-
իրմէն կը խօսի , իր անձին փառքը
կը փնտռէ . բայց ան որ զինքը
խրկողին փառքը կը փնտռէ , անի-
կայ ճշմարիտ է , և անոր քովը ա-
19 նիրաւութիւն չկայ ։ Մովսէս
չտուա՞ւ ձեզի օրէնքը , ու ձեզմէ
20 մէկն ալ չպահեր օրէնքը ։ Ին-
չո՞ւ կը փնտռէք զիս սպաննել .
պատասխան տուաւ ժողովուրդը
ու ըսաւ . Դև կայ քու ներսդ .
ո՞վ քեզ կը փնտռէ սպաննել ։
21 Պատասխան տուաւ Յիսուս՝ և ը-
սաւ անոնց . Մէկ գործ մը գոր-
ծեցի , ու ամէնքդ ալ զարմացեր
22 էք ։ Արդ՝ Մովսէս ձեզի թլփա-
տութիւնը տուաւ . ( որ չէ թէ
Մովսէսէն էր , հապա նախնիքնե-
րէն . ) ու շաբաթ օրը մարդ կը
23 թլփատէք . Թէ որ շաբաթ օրը
մարդ թլփատութիւն կ'առնէ՝ որ
Մովսէսին օրէնքը չքակուի . ինծի
կը բարկանա՞ք որ ես շաբաթ օրը
24 ամբողջ մարդ մը բժշկեցի ։ Աչքի
երևցածին պէս դատաստան մի՛ ը-
նէք , հապա արդար դատաստան
ըրէք ։
25 Ան ատենը Երուսաղէմացիներէն
ոմանք կ'ըսէին . Ասիկայ ան չէ՞
26 որն որ կը փնտռեն սպաննել . Եւ
ահա յայտնի կը խօսի , ու բան մը
չեն ըսեր անոր . միթէ իշխանները
գիտցա՞ծ են թէ ասիկայ ճշմարտա-
27 պէս Քրիստոսն է ։ Սակայն մենք
ասիկայ գիտենք ուսկից է . բայց
Քրիստոսը երբոր գայ , մէկը չգի-
28 տեր ուսկից է ։ Եւ Յիսուս քանի
որ կը սորվեցընէր , տաճարին մէջ
աղաղակեց՝ ըսելով . Զիս ալ գի-
տէք , և ուսկից ըլլալս ալ գիտէք .
Ու ես ինքիրմէս եկած չեմ . հապա
ան որ զիս խրկեց , ճշմարիտ է ,
որ անիկայ դուք չէք գիտեր ։
29 Ես գիտեմ անիկայ , ինչու որ ես
անկէ եմ , և անիկայ զիս խրկեց ։
30 Ուստի կը փնտռէին զինքը բռնե-
նել . բայց մէկն ալ իրեն ձեռք
չզարկաւ , ինչու որ իր ժամանակը
31 դեռ հասած չէր ։ Ու ժողովուրդէն
շատ մարդիկ հաւատացին իրեն ,
և կ'ըսէին . Քրիստոսը երբոր գայ ,
ասոնցմէ աւելի նշաննե՞ր պիտի ը-
նէ , որչափ որ ասիկայ կ'ընէ ։
32 Փարիսեցիները լսեցին ժողո-
վուրդին աս շշնջիւնը անոր վրա-
յով . ու փարիսեցիները և քահա-
նայապետները սպասաւորներ խըր-
33 կեցին , որ զանիկայ բռնեն ։ Իսկ
Յիսուս ըսաւ . Քիչ մը ժամանակ
ալ ձեզի հետ եմ , ու կ'երթամ
34 անոր՝ որ զիս խրկեց ։ Իս պիտի
փնտռէք՝ ու պիտի չգտնէք . և իմ
եղած տեղս դուք չէք կրնար գալ ։
35 Ան ատենը Հրէաները ըսին իրա-
րու . Ո՞ւր պիտի երթայ ասիկայ ,
որ մենք զինքը պիտի չգտնենք .
միթէ հեթանոսաց մէջ ցիրուցան
եղածներո՞ւն պիտի երթայ , և հե-
թանոսներուն պիտի սորվեցընէ ։
36 Ի՞նչ է ան խօսքը՝ որ գրուեցաւ . Իս
պիտի փնտռէք՝ ու պիտի չգտնէք .
և իմ եղած տեղս դուք չէք կրնար
գալ ։
37 Տօնին վերջի մեծ օրը Յիսուս
կայներ էր , կ'աղաղակէր ու կ'ը-

Յամ Տեառն 32

Գղ. Ե. 16. 18 ։
Ղև. ԻԳ. 34 ։
Մատ. ԺԲ. 46 ։ Մար. Գ. 31 ։ Գործ. Ա. 14 ։
Մար. Գ. 21 ։
Գղ. Բ. 4 ։ Ը. 20 ։ Հմր. 8. 30 ։
Գղ. ԺԵ. 19 ։
Գղ. Գ. 19 ։
Գղ. Ը. 20 ։ Հմր 6 ։
Գղ. ԺԱ. 56 ։
Գղ. Թ. 16 ։ Ժ. 19 ։
Մատ. ԻԱ. 46 ։ Ղու. Է. 16 ։ Գղ. Զ. 14 ։ Հմր. 40 ։
Գղ. Թ. 22 ։ ԺԲ. 42 ։ ԺԹ. 38 ։
Մատ. ԺԳ. 54 ։ Մար. Զ. 2 ։ Ղու. Դ. 22 ։ Գործ. Բ. 7 ։
Գղ. Գ. 11 ։ Ը. 28 ։ ԺԲ. 49 ։ ԺԴ. 10. 24 ։
Գղ. Ը. 43 ։
Գղ. Ե. 41 ։ Ը. 50 ։
Ել. ԻԴ. 3 ։ Օր. ԼԳ. 4 ։ Յոհ. Ա. 17 ։ Գործ. Է. 38 ։
Մատ. ԺԲ. 14 ։ Մար. Գ. 6 ։ Գղ. Ե. 16. 18 ։ Ժ. 31. 39 ։ ԺԱ. 53 ։
Գղ. Ը. 48. 52 ։ Ժ. 20 ։

Յամ Տեառն 32

Ղև. ԺԲ. 3 ։
Ծն. ԺԷ. 10 ։
Գղ. Ե. 8. 9. 16 ։
Օր. Ա. 16. 17 ։ Առակ. ԻԴ. 23. 24 ։ Գղ. Ը. 15 ։ Յակ. Բ. 1 ։
Հմր. 48 ։
Մատ. ԺԳ. 55 ։ Մար. Զ. 3 ։ Ղու. Դ. 22 ։
Տեսլ. Ը. 14 ։
Գղ. Ե. 43 ։ Ը. 42 ։
Գղ. Ե. 32 ։ Ը. 26 ։ Հռոմ. Գ. 4 ։
Գղ. Ա. 18 ։ Ը. 55 ։
Մատ. ԺԱ. 27 ։ Գղ. Ժ. 15 ։
Մար. ԺԱ. 18 ։ Ղու. ԺԹ. 47 ։ Ի. 19 ։ Հմր 19 ։ Գղ. Ը. 37 ։
Հմր 44 ։ Գղ. Ը. 20 ։
Մատ. ԺԲ. 23 ։ Գղ. Գ. 2 ։ Ը. 30 ։
Գղ. ԺԳ. 33 ։ ԺԶ. 16 ։
Ովս. Ե. 6 ։ Գղ. Ը. 21 ։ ԺԳ. 33 ։
Յուն. Յունաց
Եսա. ԺԱ. 12 ։ Յակ. Ա. 1 ։ Ա Պետ. Ա. 1 ։
Ղև. ԻԳ. 36 ։

Յամի Տեառն 32

ա Ես. ծե. 1. Գլ. դ. 53. Յայտ. իբ. 17.
բ Բ Օր. ժը. 15.
գ Առակ. ժը. 4. Ես. ժբ. 3. խդ. 3. Գլ. դ. 14.
դ Ես. խդ. 3. Յովէլ. բ. 28. Գլ. ժզ. 7. Գործ. բ. 17, 33, 38.
ե Գլ. ժբ. 16. ժզ. 7.
զ Բ Օր. ժը. 15, 18. Գլ. ա. 21. զ. 14.
է Գլ. զ. 42. զ. 70.
ը Հմր 52. Գլ. ա. 46.
թ Սաղ. ճլբ. 11. Երեմ. իգ. 5. Միք. ե. 2. Մատ. բ. 5. Ղուկ. բ. 4.
ժ Ա Թագ. ժզ. 1, 4.
ի Հմր 12. Գլ. թ. 16. ժ. 19.
լ Հմր 30.
խ Մատ. է. 29.
ծ Գլ. ժբ. 42. Գործ. զ. 7. Ա Կոր. ա. 20, 26. բ. 8.
կ Գլ. գ. 2.
հ Բ Օր. ա. 17. ժէ. 8. ժթ. 15.
ձ Ես. թ. 1, 2. Մատ. դ. 15. Գլ. ա. 46. Հմր 41.

սէր . Եթէ որ մէկը ծարաւ է, թող
38 ինծի գայ ու խմէ ։ Ան որ ինծի
կը հաւատայ՝ ինչպէս որ գիրքը
կ'ըսէ, անոր փորէն կենդանի
39 ջուրի գետեր պիտի բղխեն ։ Աս
ըսաւ Հոգիին համար՝ որ իրեն հա-
ւատացողները պիտի առնէին .
վասն զի Սուրբ Հոգին տրուած չէր
տակաւին, ինչու որ Յիսուս դեռ
40 փառաւորուած չէր ։ Ժողովուր-
դէն շատ մարդիկ աս խօսքը որ
լսեցին, կ'ըսէին . Իրաւցընէ աս ի-
41 կայ է մարգարէն ։ Ուրիշները
կ'ըսէին . Ասիկայ է Քրիստոսը .
ուրիշներն ալ կ'ըսէին . Միթէ Քը-
րիստոսը Գալիլեայէ՞ն կու գայ ։
42 Չէ՞ որ գիրքը կ'ըսէ թէ, Քրիս-
տոսը Դաւիթի սերունդէն ու
Դաւիթին եղած գիւղէն Բեթլէ-
43 հեմէն կու գայ ։ Ուստի ժողո-
վուրդին մէջ երկպառակութիւն
44 եղաւ անոր համար ։ Եւ անոնց-
մէ ոմանք ուզեցին բռնել անի-
կայ . բայց մէկը անոր ձեռք չզար-
կաւ ։
45 Ու սպասաւորները նորէն եկան
քահանայապետներուն և փարիսե-
ցիներուն . ու ասոնք ըսին անոնց .
46 Ինչու անիկայ հոս չբերիք ։ Պա-
տասխան տուին սպասաւորները .
Երբէք մէկը աս մարդուն պէս
47 խօսած չէ ։ Ան ատենը փարիսեցի-
ները պատասխան տուին անոնց և
ըսին . Միթէ դուք ալ մոլորե-
48 ցաք ։ Իշխաններէն կամ փարի-
սեցիներէն մէկը հաւատա՞ց անոր .
49 Բայց աս ռամիկ ժողովուրդը՝ որ
օրէնքը չեն գիտեր, նզովուած են ։
50 Նիկոդեմոս ըսաւ անոնց . (Որ ա-
ռաջ գիշեր ատեն իրեն եկեր էր,
51 և անոնցմէ մէկն էր . ) Միթէ մեր
օրէնքը մարդ կը դատէ՞, թէ որ
առաջ անկէ բան մը չլսէ, և չգիտ-
52 նայ թէ ինչ կ'ընէ ։ Պատասխան
տուին ու ըսին անոր . Միթէ
դուն ալ Գալիլեայէն ես . քննէ
ու նայէ, որ Գալիլեայէն մարգա-
53 րէ չելլեր ։ Եւ ամէն մէկը իր տու-
նը գնաց ։

## ԳԼ. Ը

1 Քրիստոս կ'արձակէ շնութեան յանցանքով բռնուած կինը . 12 կը յայտնէ թէ ինքն է աշխարհիս լոյսը, ու իր վարդապետութիւնը կ'արդարացընէ . 33 Աբրահամին վրայ պարծեցող Հրէից պատասխան կու տայ . 59 և մէկդի կը քաշուի անոնց կատաղութենէն ։

1 Եւ Յիսուս Ձիթենեաց լեռը գը-
2 նաց ։ Ու առտուանց նորէն
տաճարը եկաւ, և բոլոր ժողովուր-
դը իրեն կու գար, ու ինքը նստեր
3 կը սորվեցընէր անոնց ։ Եւ դպիր-
ները ու փարիսեցիները շնութեան
մէջ բռնուած կնիկ մը բերին ա-
նոր, ու զանիկայ մէջտեղը կայնե-
4 ցընելով՝ ըսին իրեն . Վարդապետ,
աս կնիկը շնութեան մէջ՝ աս մեղ-
քը գործած ատենը բռնուեցաւ .
5 Եւ օրինաց մէջ Մովսէս մեզի
պատուիրեց ասանկները քարկո-
ծել . հիմա դուն ի՞նչ կ'ըսես ա-
6 նոր համար ։ Աս կ'ըսէին՝ անի-
կայ փորձելով, որ անոր վրայ ամ-
բաստանութիւն ընելու առիթ մը
ունենան . բայց Յիսուս դէպ 'ի
վար ծռելով՝ մատովը գետնին վը-
7 րայ կը գրէր ։ Սակայն երբոր վը-
րան ինկան՝ հարցընելով իրեն, վեր
նայեցաւ ու ըսաւ անոնց . Ձեզմէ
անմեղ եղողը՝ առաջ անիկայ թող
8 քար ձգէ ատոր վրայ ։ Եւ նորէն
դէպ 'ի վար ծռելով՝ գետնին վրայ
9 կը գրէր ։ Եւ անոնք աս լսելով՝
ու իրենց խղճմտանքէն յանդիմա-
նուելով՝ մէկիկ մէկիկ դուրս կ'ել-
լէին, ծերերէն սկսած մինչև յե-
տինները . և Յիսուս մինակ մնաց,
10 ու կնիկը մէջտեղը կայնած ։ Եւ
Յիսուս վեր նայելով՝ ու կնիկէն
զատ մէկը չտեսնելով՝ ըսաւ անոր .
Կնիկ՝ ո՞ւր են անոնք որ քու վրա-
յովդ ամբաստանութիւն կ'ընէին .
11 մէկը քեզ չդատապարտե՞ց ։ Եւ
անիկայ ըսաւ . Ո՛չ մէկը՝ Տէր . ու
Յիսուս ըսաւ անոր . Ես ալ չեմ
դատապարտեր քեզ . գնա՝ ու
ասկէ ետև մեղք մի գործեր ։
12 Արդ՝ Յիսուս նորէն խօսեցաւ ա-
նոնց՝ ու ըսաւ . Ես եմ աշխարհի
լոյսը . ան որ իմ ետևէս կու գայ,
խաւարի մէջ պիտի չքալէ, հապա
13 կենաց լոյսը պիտի ունենայ ։ Իսկ
փարիսեցիները ըսին անոր . Դուն
քու անձիդ համար կը վկայես,
քու վկայութիւնդ ճշմարիտ չէ ։
14 Պատասխան տուաւ Յիսուս՝ ու ը-
սաւ անոնց . Թէև ես իմ անձիս
համար վկայեմ, բայց իմ վկայու-
թիւնս ճշմարիտ է, ինչու որ գի-
տեմ ուսկից եկայ, և ո՛ւր կ'եր-
թամ . բայց դուք չէք գիտեր
ուսկից կու գամ, կամ ո՛ւր կ'եր-
15 թամ ։ Դուք մարմնին նայելով
դատաստան կ'ընէք . ես բնաւ մէկը
16 չեմ դատեր ։ Ու թէև դատելու
ալ ըլլամ, իմ դատաստանս ճըշ-
մարիտ է . ինչու որ ես մինակ չեմ,
հապա ես, և Հայրը որ զիս խըր-
17 կեց ։ Ու ձեր օրէնքին մէջն ալ
գրուած է թէ, Երկու մարդու վը-
18 կայութիւնը ճշմարիտ է ։ Ես եմ
որ իմ անձիս համար կը վկայեմ,
ու կը վկայէ ինծի համար Հայրն
19 ալ՝ որ զիս խրկեց ։ Ան ատենը
ըսին անոր . Ո՞ւր է քու Հայրդ .
Յիսուս պատասխան տուաւ . Ո՛չ
զիս գիտէք՝ և ո՛չ իմ Հայրս . Թէ

Յամի Տեառն 32

ա Ղև. ի. 10. Բ Օր. իբ. 22.
բ Բ Օր. ժէ. 7. Հռով. բ. 1.
գ Հռով. բ. 22.
դ Ղուկ. թ. 56. ժբ. 14. Գլ. գ. 17.
ե Գլ. ե. 14.
զ Գլ. ա. 4, 5, 9. գ. 19. թ. 5. ժբ. 35, 36, 46.
է Գլ. ե. 31.
ը Գլ. է. 28. թ. 29.
թ Գլ. է. 24.
ժ Գլ. գ. 17. ժբ. 47. ժը. 36.
ի Հմր 29. Գլ. ժզ. 32.
լ Բ Օր. ժէ. 6. ժթ. 15. Մատ. ժը. 16. Բ Կոր. ժգ. 1. Եբր. ժ. 28.
խ Գլ. ե. 37.
ծ Հմր 55. Գլ. ժզ. 3.
կ Գլ. ժդ. 7.

Յամի Տեառն 32

հ Մար. ժբ. 41։
ի Գլ. է. 30։
ա Գլ. է. 8։
ճ Գլ. է. 34։ ժգ. 33։
մ Հմր 24։
յ Գլ. գ. 31։
ն Գլ. ժե. 19։ ժէ. 16։ ա Յով. դ. 5։
շ Հմր 21։
ո Մար. ժզ. 16։
չ Գլ. է. 28։
պ Գլ. գ. 32։ ժե. 15։
ջ Գլ. գ. 14։ ժբ. 32
ռ Հռով. ա. 4։
ս Գլ. ե. 19, 30։
վ Գլ. գ. 11։
տ Գլ. ժդ. 10, 11։
ր Հմր 16։
ց Գլ. դ. 34։ ե. 30։ զ. 38։
ւ Գլ. է. 31։ ժ. 42։ ժա. 45։
փ Հռով. զ. 14, 18, 22։ ը. 2։ Յակ. ա. 25։ բ. 12։
ք Ղև. իե. 42։ Մատ. գ. 9։ Հմր 39։
օ Հռով. զ. 16, 20։ բ Պետ. բ. 19։
ֆ Գաղ. դ. 30։
ա Հռով. ը. 2։ Գաղ. ե. 1։

որ զիս գիտնայիք. իմ Հայրս ալ
պիտի գիտնայիք։
20 Յիսուս աս խօսքերը խօսեցաւ
[հ]գանձատունը, երբոր տաճարին մէջ
կը սորվեցընէր. [ի]ու մէկը չբռնեց
զանիկայ, ինչու որ [ա]դեռ անոր ժա-
մանակը հասած չէր։
21 Ետքը Յիսուս նորէն ըսաւ ա-
նոնց. Ես կ'երթամ՝ [ճ]ու զիս պիտի
փնտռէք. [մ]և ձեր մեղացը մէջ պի-
տի մեռնիք. ուր որ ես կ'երթամ,
22 դուք չէք կրնար գալ։ Ասոր վրայ
Հրէաները կ'ըսէին. Միթէ ինք-
զինքը պիտի մեռցընէ՞, որ կ'ըսէ
թէ՝ Ո՛ւր որ ես կ'երթամ, դուք
23 չէք կրնար գալ։ Եւ ըսաւ անոնց.
[յ]Դուք վարէն էք, ես վերէն եմ.
[ն]դուք աս աշխարհէս էք, ես աս
24 աշխարհէս չեմ. [շ]Անոր համար ձե-
զի ըսի թէ՝ Ձեր մեղացը մէջ պիտի
մեռնիք. [ո]ինչու որ եթէ չհաւատաք
թէ ես եմ, ձեր մեղացը մէջ պիտի
25 մեռնիք։ Ան ատենը ըսին անոր.
Դուն ո՞վ ես. և Յիսուս ըսաւ
անոնց. Ինչ որ սկիզբէն ձեզի կը
26 խօսիմ։ Շատ բաներ ունիմ
ձեզի համար խօսելու՝ և դատելու.
բայց [չ]ան որ զիս խրկեց, ճշմարիտ
է. [պ]և ես ինչ որ իրմէ լսեցի, ա-
նիկայ կը խօսիմ աշխարհիս մէջ։
27 Անոնք չիմացան թէ Հօրը համար
կը զրուցէր իրենց։
28 Իսկ Յիսուս ըսաւ անոնց. [ջ]Երբ-
որ Որդին մարդոյ բարձրացընէք,
[ռ]ան ատենը պիտի գիտնաք թէ ես
եմ, [ս]ու ինքիրմէս բան մը չեմ ը-
ներ, [վ]հապա Հայրս ինչպէս որ ին-
ծի սորվեցուց, անանկ կը խօսիմ։
29 [տ]Եւ զիս խրկողը իմ հետս է. [ր]Հայ-
րը զիս մինակ չթողուց. [ց]ինչու որ
ես միշտ անոր հաճելի եղած բանե-
րը կ'ընեմ։
30 Երբոր ասոնք խօսեցաւ, [ւ]շատ
31 մարդիկ իրեն հաւատացին։ Ան
ատենը Յիսուս իրեն հաւատացող
Հրէաներուն ըսաւ. Թէ որ դուք
իմ խօսքիս մէջ կենաք, ճշմարտա-
պէս իմ աշակերտներս կ'ըլլաք.
32 Եւ ճշմարտութիւնը պիտի գիտ-
նաք, [փ]ու ան ճշմարտութիւնը ձեզ
33 պիտի ազատէ։ Պատասխան տուին
իրեն. [ք]Մենք Աբրահամի սերունդ
ենք, ու երբեք մէկու մը չծառա-
յեցինք. դուն ինտո՞ր կ'ըսես թէ
34 ազատ պիտի ըլլաք։ Յիսուս պա-
տասխան տուաւ անոնց. Ճշմա-
րիտ ճշմարիտ կ'ըսեմ ձեզի թէ,
[օ]Ամէն ով որ մեղք կը գործէ, անի-
35 կայ մեղքի ծառայ է։ [ֆ]Եւ ծառան
տանը մէջ յաւիտեան չմնար, բայց
36 որդին յաւիտեան կը մնայ։ [ա]Ուս-
տի թէ որ Որդին ձեզ ազատ ը-
նէ, ճշմարտապէս ազատ պիտի ըլ-

37 լաք։ Գիտեմ որ Աբրահամի սե-
րունդ էք, [բ]բայց կը փնտռէք զիս
մեռցընել, ինչու որ իմ խօսքս ձեր
38 ներսի դին տեղ չունի։ [գ]Ես ինչ
որ տեսայ իմ Հօրս քովը՝ զան կը
խօսիմ. և դուք ալ ինչ որ տե-
սաք ձեր հօրը քովը՝ զան կ'ընէք։
39 Պատասխան տուին ու ըսին անոր.
[դ]Մեր հայրը Աբրահամն է. ըսաւ
անոնց Յիսուս. [ե]Եթէ որ Աբրահա-
մին որդիքը ըլլայիք՝ Աբրահամին
40 գործքերը պիտի գործէիք։ [զ]Բայց
հիմա կը փնտռէք սպաննել զիս,
զանանկ մարդ մը՝ որ ձեզի ճշմարտու-
թիւն խօսեցայ, [է]որն որ Աստուծ-
մէ լսեցի. Աբրահամ աս բանը չը-
41 րաւ։ Դուք ձեր հօրը գործքերը
կ'ընէք. ան ատենը ըսին անոր.
Մենք պոռնկութենէ չենք ծնած.
[ը]մէնք մէկ Հայր մը ունինք՝ որ է
42 Աստուած։ Յիսուս ըսաւ անոնց.
[թ]Թէ որ Աստուած ձեր Հայրը ըլ-
լար, պիտի սիրէիք զիս. [ժ]ինչու
որ ես Աստուծմէ ելայ՝ ու եկայ. [ի]և
չէ թէ ես ինքիրմէս եկայ, հապա
43 անիկայ զիս խրկեց։ [լ]Ինչո՞ւ դուք
իմ զրուցուածքս չէք հասկընար.
անոր համար որ չէք կրնար իմ
44 խօսքս մտիկ ընել։ [խ]Դուք ձեր
հօրմէն Սատանայէն էք, ու ձեր
հօրը բաղձանքը կ'ուզէք ընել. ա-
նիկայ սկիզբէն հետէ մարդասպան
էր, [ծ]և ճշմարտութեան մէջ չկե-
ցաւ, ինչու որ անոր ներսի դին
ճշմարտութիւն չկայ. երբոր անի-
կայ ստութիւն խօսի, բուն իրեն-
ներէն կը խօսի. քանզի անիկայ
45 ստախօս է և անոր հայրը։ Բայց
որովհետև ես ճշմարտութիւն կը
խօսիմ, ինծի չէք հաւատար։
46 Ձեզմէ ո՞վ կրնայ զիս յանդիմանել
մեղքի համար. իսկ թէ որ ես ճշ-
մարտութիւն կը խօսիմ, ինչո՞ւ
47 ինծի չէք հաւատար։ [կ]Ան որ Աս-
տուծմէ է, Աստուծոյ խօսքերը մը-
տիկ կ'ընէ. դուք անոր համար մը-
տիկ չէք ըներ, որ Աստուծմէ չէք։
48 Պատասխան տուին Հրէաները՝ ու
ըսին անոր. Աղէկ չե՞նք ըսեր մենք,
թէ դուն Սամարացի ես՝ [հ]ու դև
49 կայ քու ներսդ։ Յիսուս պատասխա-
խան տուաւ՝ ու ըսաւ. Իմ ներսս
դև չկայ, հապա ես իմ Հայրս կը
պատուեմ, և դուք զիս կ'անար-
50 գէք։ [ձ]Իսկ ես իմ փառքս չեմ
փնտռեր. կայ մէկը՝ որ կը փնտռէ,
51 ու կը դատէ։ Ճշմարիտ ճշմարիտ
կ'ըսեմ ձեզի. [ղ]Թէ որ մէկը իմ
խօսքս պահէ, յաւիտեան մահ պի-
52 տի չտեսնէ։ Ան ատենը Հրէանե-
րը ըսին անոր. Հիմա գիտցանք որ
քու ներսդ դև կայ. [ճ]Աբրահամ
մեռաւ՝ ու մարգարէները. և դուն

Յամի Տեառն 32

բ Գլ. ե. 20։ Հմր 40։
գ Գլ. գ. 32։ ե. 19, 30։ ժդ. 10, 24։
դ Մատ. գ. 9։ Հմր 33։
ե Հռով. բ. 28։ թ. 7։ Գաղ. գ. 7, 29։
զ Հմր 37։
է Հմր 26։
ը Ես. կգ. 16։ կդ. 8։ Մաղ. ա. 6։
թ ա Յով. ե. 1։
ժ Գլ. ժզ. 27։ ժէ. 8, 25։
ի Գլ. ե. 43։ է. 28, 29։
լ Գլ. է. 17։
խ Մատ. ժգ. 38։ ա Յով. գ. 8։
ծ Յուդ. 6։
կ Գլ. ժ. 26, 27։ ա Յով. դ. 6։
հ Գլ. է. 20։ ժ. 20։ Հմր 52։
ձ Գլ. ե. 41։ է. 18։
ղ Գլ. ե. 24։ ժա. 26։
ճ Զաք. ա. 5։ Եբր. ժա. 13։

Յամի Տեառն 32

կ'ըսես , թէ որ մէկը իմ խօսքս
պահէ , յաւիտեան մահուան համը
53 պիտի չառնէ ։ Միթէ դուն աւե-
լի՞ մեծ ես մեր հայր Աբրահամէն՝
որ մեռաւ . ու մարգարէներն ալ
մեռան . դուն քեզ ո՞վ կ'ընես ։
54 Յիսուս պատասխան տուաւ . ʃ Թէ
որ ես ինքզինքս փառաւորեմ , իմ
փառքս բան մը չէ . ɔ իմ Հայրս է՝
որ զիս կը փառաւորէ , որուն համար
դուք կ'ըսէք թէ ⁺Մեր Աստուածն
55 է . ˢ Եւ անիկայ չէք ճանչնար .
բայց ես գիտեմ անիկայ . ու թէ
որ ըսեմ՝ թէ անիկայ չեմ գիտեր ,
ձեզի պէս ստախօս պիտի ըլլամ .
հապա ես գիտեմ անիկայ , և անոր
56 խօսքը կը պահեմ ։ ˡ Ձեր հայրը
Աբրահամ ցանկացաւ իմ օրս տես-
նելու . ու ᵐ տեսաւ և ուրախացաւ ։
57 Իսկ Հրէաները ըսին անոր . Դուն
տակաւին յիսուն տարեկան չես ,
58 Աբրահա՞մն ալ տեսար ։ Յիսուս
ըսաւ անոնց . Ճշմարիտ ճշմարիտ
կ'ըսեմ ձեզի , ⁿ Աբրահամին ըլլա-
59 լէն առաջ եմ ես ։ Ան ատենը
ᵒ քարեր վերցուցին՝ որ անոր վրայ
նետեն . բայց Յիսուս ծածկուեցաւ
անոնց աչքերէն , և ᵖ անոնց մէջէն
անցնելով՝ տաճարէն դուրս ելաւ ,
ու այսպէս գնաց ։

ʃ Գլ. Ե. 31 ։
ɔ Գլ. Ե. 41 ։ ԺԶ. 14 ։ ԺԷ. 1 ։ Գործ. Գ. 13 ։
⁺ Ո՞րն է՝ մեր
ˢ Գլ. Է. 28, 29 ։
ˡ Ղուկ. Ժ. 24 ։
ᵐ Եբր. ԺԱ. 13 ։
ⁿ Եւ. Գ. 14 ։ Եա. ԽԴ. 13 ։ Գլ. ԺԷ. 5. 24 ։ Կող. Ա. 17 ։ Յայտ. Ա. 8 ։
ᵒ Գլ. Ժ. 31, 39 ։ ԺԱ. 8 ։
ᵖ Ղուկ. Դ. 30 ։

## ԳԼ. Թ

1 Քրիստոս 'ի ծնէ կոյրին աչքերը կը բանայ ։ 8 Ան բժշկուած մարդը փարիսեցւոց կը տարուի , 13 որոնք բարկանալով դուրս կ'ընեն զանիկայ իրենց ժողովարանէն . 35 բայց Յիսուս կ'ընդունի զանիկայ . ու ան ալ կը հաւատայ անոր ։ 39 Քրիստոս զորո՞նք կը լուսաւորէ ։

1 Ու երբոր կ'անցնէր , մէկ մարդ մը
2 տեսաւ կոյր ծնած . Եւ իր ա-
շակերտները հարցուցին իրեն , ու
ըսին . Ռաբբի՝ ᵃ որո՞ւնն է մեղքը ,
ասո՞ր՝ թէ իր ծնողացը , որ անիկայ
3 կոյր ծնաւ ։ Պատասխան տուաւ
Յիսուս . Ոչ ասորն է մեղքը , ոչ
ալ իր ծնողացը . ᵇ հապա՝ որ Աս-
տուծոյ գործքերը ասոր վրայ յայտ-
4 նի ըլլան ։ ᶜ Քանի որ ցորեկ է ,
պէտք է որ զիս խրկողին գործքերը
գործեմ . գիշերը կու գայ , որ
ան ատենը մէկը չկրնար գործել ։
5 Քանի որ ես աշխարհի մէջ եմ ,
6 ᵈ աշխարհի լոյսն եմ ։ Երբոր ասս
ըսաւ , ᵉ թուքաւ գետինը , և թու-
քովը կաւ շինեց , ու ան կաւը կոյ-
7 րին աչքերուն վրայ ծեփեց . Եւ
ըսաւ անոր . Գնա լուացուէ Սե-
լովամի աւազանին մէջ , ( որ Խըր-
կուած կը թարգմանուի . ) ᶠ ուստի
գնաց ու լուացուեցաւ , եկաւ ու կը
8 տեսնէր ։ Իսկ դրացիները՝ և ա-
նոնք որ առաջուց տեսած էին զա-
նիկայ որ † մուրացկան էր , կ'ըսէին .
Անիկայ չէ՞ր որ կը նստէր և կը

ᵃ Հմր 34 ։
ᵇ Գլ. ԺԱ. 4 ։
ᶜ Գլ. Դ. 34 ։ Ե. 19 , 36 ։ ԺԱ. 9 ։ ԺԲ. 35 ։ ԺԷ. 4 ։
ᵈ Գլ. Ա. 5 , 9 ։ Դ. 19 ։ Ը. 12 ։ ԺԲ. 35 , 46 ։
ᵉ Մար. Է. 33 ։ Ը. 23 ։
ᶠ Նէեմ. Գ. 15 ։
ᶠ Տես Դ Թագ. Ե. 14 ։
† Ո՞րն է՝ կոյր

մուրար . ոմանք կ'ըսէին , Անիկայ
9 է . Ուրիշները կ'ըսէին , Անոր նը-
10 ման մէկն է . Իսկ ինքը կ'ըսէր թէ ,
Ես եմ ։ Ուստի ըսին իրեն . Հա-
պա ինչպէ՞ս բացուեցան քու աչքե-
11 րդ ։ Ինքը պատասխան տուաւ
ու ըսաւ . ᵍ Յիսուս կոչուած մարդ
մը կաւ շինեց , ու աչքերս ծեփեց ,
և ըսաւ ինծի . Գնա Սելովամի
աւազանը՝ ու լուացուէ՛ . ես ալ
գացի լուացուեցայ ու կը տեսնեմ ։
12 Եւ ըսին իրեն . Ո՞ւր է անիկայ .
ըսաւ անոնց . Չեմ գիտեր ։
13 Փարիսեցիներուն տարին զանի-
14 կայ՝ որ ատենով կոյր էր ։ Եւ շա-
բաթ օր էր՝ երբոր Յիսուս կաւը
շինեց , ու անոր աչքերը բացաւ ։
15 Նորէն փարիսեցիներն ալ կը հար-
ցընէին իրեն , թէ ինչպէս կը տես-
նէ . անիկայ ալ ըսաւ անոնց . Կաւ
դրաւ աչքերուս վրայ , ու լուա-
16 ցուեցայ և կը տեսնեմ ։ Ասոր վը-
րայ փարիսեցիներէն ոմանք կ'ըսէին.
Ան մարդը Աստուծմէ չէ , ինչու որ
շաբաթ օրը չպահեր . ուրիշները
կ'ըսէին . ʰ Ինչպէ՞ս կրնայ մեղաւոր
մարդ մը ասանկ հրաշքներ ընել .
ⁱ ու մէջերնին երկպառակութիւն
17 կար ։ Նորէն ըսին կոյրին . Դուն
ի՞նչ կ'ըսես անոր համար՝ որ քու
աչքերդ բացաւ . ան ալ ըսաւ ʲ թէ ,
18 Մարգարէ մըն է ։ Իսկ Հրէաները
չէին հաւատար անոր համար՝ թէ
կոյր էր ու բացուեցաւ , մինչև որ
ան աչքը բացուածին ծնողքը կան-
19 չեցին . Եւ անոնց հարցուցին ու
ըսին . Ա՞ս է ձեր որդին , որուն
համար դուք կ'ըսէք թէ կոյր ծնաւ .
հապա հիմա ինչպէ՞ս կը տեսնէ ։
20 Անոր ծնողքը պատասխան տուին
անոնց ու ըսին . Գիտենք որ ասի-
կայ է մեր որդին , և որ ինքը կոյր
21 ծնաւ . Բայց հիմա ինչպէ՞ս կը տես-
նէ , չենք գիտեր , կամ թէ ով
բացաւ ասոր աչքերը , մենք չենք
գիտեր . ինքը չափահաս է , իրեն
հարցուցէք . թող ինքը խօսի ի-
22 րեն համար ։ Ասս ըսին անոր ծնող-
քը , ᵏ Հրէաներէն վախնալնուն հա-
մար . քանզի Հրէաները միաբան
հաւանութեամբ որոշեր էին որ եթէ
մէկը անիկայ Քրիստոս դաւանի ,
23 ˡ ժողովարանէն դուրս ձգուի ։ Ասոր
համար անոր ծնողքը ըսին թէ ,
Ինքը չափահաս է , իրեն հարցու-
24 ցէք ։ Ետքը նորէն կանչեցին ան
մարդը որ կոյր էր , ու ըսին անոր .
ᵐ Աստուծոյ փառք տուր , ⁿ մենք
գիտենք որ ան մարդը մեղաւոր է ։
25 Անիկայ ալ պատասխան տուաւ ու
ըսաւ . Թէ որ մեղաւոր է , ես չեմ
գիտեր . միայն ան գիտեմ որ կոյր
26 էի , և հիմա կը տեսնեմ ։ Նորէն

Յամի Տեառն 32

ᵍ Հմր 6 , 7 .
ʰ Հմր 33 ։ Գլ. Դ. 2 ։
ⁱ Գլ. Է. 12 , 43 ։ Ժ. 19 ։
ʲ Գլ. Դ. 19 ։ Զ. 14 ։
ᵏ Գլ. Է. 13 ։ ԺԲ. 42 ։ ԺԹ. 38 ։ Գործ. Ե. 13 ։
ˡ Հմր 34 ։ Գլ. ԺԶ. 2 ։
ᵐ Յեսու. Է. 19 ։ Ա Թագ. Զ. 5 ։
ⁿ Հմր 16 ։

Յամի Տեառն 32

ըսին անոր . Ի՞նչ ըրաւ քեզի .
27 քու աչքերդ ինչո՞ր բացաւ ։ Պա-
տասխան տուաւ անոնց . Հիմա
ըսի ձեզի ու չլսեցիք . ինչո՞ւ հա-
մար նորէն լսել կ՚ուզէք . միթէ
դո՞ւք ալ կ՚ուզէք անոր աշակերտ
28 ըլլալ ։ Անոնք նախատելով զա-
նիկայ՝ ըսին . Դուն ես անոր աշա-
կերտը . իսկ մենք Մովսէսին աշա-
29 կերտներն ենք ։ Մենք գիտենք՝ որ
Աստուած Մովսէսին հետ խօսեցաւ .
բայց ասիկայ չենք գիտեր թէ ուս-
30 կից է ։ Պատասխան տուաւ մար-
դը և ըսաւ անոնց . Ասիկայ է
զարմանալու բանը՝ որ դուք չէք
գիտեր թէ ուսկից է , և անիկայ
31 իմ աչքերս բացաւ ։ Գիտենք որ
Աստուած մեղաւորներուն մտիկ
չըներ . բայց թէ որ մէկը աստուա-
ծապաշտ ըլլայ , ու անոր կամքը
32 կատարէ , անոր մտիկ կ՚ընէ ։ Աշ-
խարհիս սկիզբէն ՚ի վեր լսուած չէ
որ մարդ մը կոյր ծնածի մը աչքերը
33 բացած է ։ Թէ որ Աստուծմէ
չըլլար ան մարդը՝ բան մըն ալ չէր
34 կրնար ընել ։ Պատասխան տուին
և ըսին անոր . Դուն բոլորովին
մեղաց մէջ ծնած ես , ու մեզի վար-
դապետութի՞ւն կ՚ընես . և դուրս
ըրին անիկայ ։
35 Յիսուս լսեց որ զանիկայ դուրս
ըրին , ու երբոր գտաւ զանիկայ՝
ըսաւ անոր . Դուն կը հաւատա՞ս
36 Աստուծոյ Որդիին ։ Անիկայ պա-
տասխան տուաւ՝ ու ըսաւ . Տէ՛ր
37 ո՞վ է՝ որ հաւատամ անոր ։ Եւ
Յիսուս ըսաւ անոր . Տեսար ալ
անիկայ , և քեզի հետ խօսողը ան
38 է ։ Անիկայ ալ ըսաւ . Կը հա-
ւատամ՝ Տէր . ու անոր երկրպա-
39 գութիւն ըրաւ ։ Եւ Յիսուս ը-
սաւ . Ես դատաստանի համար ե-
կայ աս աշխարհս , որ չտեսնող-
ները տեսնեն , և տեսնողները կու-
րանան ։
40 Եւ փարիսեցիներէն ոմանք որ իր
հետն էին , աս բաները լսելով՝ ը-
սին իրեն . Միթէ մե՞նք ալ կոյր
41 ենք ։ Յիսուս ըսաւ անոնց . Թէ
որ կոյր ըլլայիք , դուք մեղք չէիք
ունենար . բայց հիմա կ՚ըսէք թէ
կը տեսնենք . ասոր համար ձեր
մեղքը ձեր վրայ կը մնայ ։

Գլ. 14 ։
Գլ. գ. 10 ։
Յոբ. իէ. 9 ։ լե. 12 ։ Սաղ. ժը. 41 ։ լդ. 15 ։ կղ. 18 ։ Առակ. ա. 28 ։ ժե. 29 ։ իը. 9 ։ Եսա. ա. 15 ։ Երեմ. ժա. 11 ։ ժդ. 12 ։ Եզեկ. ը. 18 ։ Միք. գ. 4 ։ Զաք. է. 13 ։
Հմր 16 ։
Հմր 2 ։
Մատ. ժգ. 33 ։ ժզ. 16 ։ Մարկ. ա. 1 ։ Գլ. ժ. 36 ։ ա Յով. ե. 13 ։
Գլ. դ. 26 ։
Գլ. ե. 22 ։ 27 ։ Տեսգլ. գ. 17 ։ ժբ. 47 ։
Մատ. ժգ. 13 ։
Հռով. բ. 19 ։
Գլ. ժե. 22 ։ 24 ։

ԳԼ. Ժ

1 Քրիստոս է կենաց դուռը՝ և բարի հովիւը ։ 19 Հրէից տարբեր կարծիքները անոր վրայով ։ 24 Յիսուս իր գործքերովը կը ցուցնէ թէ ինքն է Քրիստոսը Աստուծոյ Որդին . 39 Հրէից ձեռքէն կը փախչի ։ 40 և դարձեալ կ՚երթայ Յորդանանու միւս կողմը , ուր շատերը կը հաւատան իրեն ։

1 Ճշմարիտ ճշմարիտ կ՚ըսեմ ձեզի .
Ան որ դռնէն չմտներ ոչխար-
ներուն բակը , հապա ուրիշ տեղէն
կ՚ելլէ , անիկայ գող ու աւազակ
2 է ։ Բայց ան որ դռնէն կը մտնէ ,
անիկայ ոչխարներուն հովիւն է ։
3 Դռնապանը կը բանայ անոր , և
ոչխարները անոր ձայնին կը լսեն ,
ու իր ոչխարները անուանովին կը
կանչէ , և դուրս կը հանէ զանոնք ։
4 Ու երբոր իր ոչխարները կը հանէ ,
անոնց առջևէն կ՚երթայ , ու ոչ-
խարները իր ետևէն կ՚երթան . ին-
չու որ անոր ձայնը կը ճանչնան ։
5 Սակայն օտարի ետևէ չեն երթար .
հապա անկէ կը փախչին , ինչու որ
օտարներուն ձայնը չեն ճանչնար ։
6 Յիսուս աս առակը ըսաւ անոնց .
բայց անոնք չէին իմանար՝ թէ ինչ
7 էր որ իրենց կը խօսէր ։ Եւ Յի-
սուս նորէն ըսաւ անոնց . Ճշմա-
րիտ ճշմարիտ կ՚ըսեմ ձեզի . Ես
8 եմ ոչխարներուն դուռը ։ Ամէն
անոնք որ ինծմէ առաջ եկան , գող
ու աւազակ էին . բայց անոնց չլսե-
9 ցին ոչխարները ։ Ես եմ դուռը .
թէ որ մէկը ինծմէ ներս մտնէ՝ պի-
տի փրկուի , ու պիտի մտնէ ու
10 ելլէ , և արօտ գտնէ ։ Գողը չգար ,
միայն թէ գողնալու և սպաննելու
ու կորսնցընելու համար . ես եկայ
որ կեանք ունենան , և ալ աւելի
11 ունենան ։ Ես եմ բարի հովիւը .
բարի հովիւը իր կեանքը ոչխար-
12 ներուն համար կը դնէ ։ Բայց
վարձկանը որ հովիւ չէ , ու ոչխար-
ները իրը չեն , երբոր կը տեսնէ
գայլը որ կու գայ , կը թողու ոչ-
խարները ու կը փախչի . և գայլը
կը յափշտակէ ոչխարները , ու զա-
13 նոնք կը ցրուէ ։ Եւ վարձկանը
կը փախչի , ինչու որ վարձկան է ,
ու իր հոգը չէ ոչխարներուն հա-
14 մար ։ Ես եմ բարի հովիւը , և
կը ճանչնամ իմիններս , ու կը ճանչ-
15 ցուիմ իմիններէս ։ Ինչպէս որ
Հայրը զիս կը ճանչնայ , ես ալ
Հայրը կը ճանչնամ , ու իմ կեան-
քըս ոչխարներուն համար կը դնեմ ։
16 Ուրիշ ոչխարներ ալ ունիմ , որոնք
աս բակէն չեն . անոնք ալ պէտք է
որ բերեմ . ու իմ ձայնիս պիտի
լսեն . և պիտի ըլլան մէկ հօտ ու
17 մէկ հովիւ ։ Անոր համար իմ
Հայրս զիս կը սիրէ , որ ես իմ
կեանքս կը դնեմ , որ նորէն առնեմ
18 անիկայ ։ Մէկը չհաներ անիկայ
ինծմէ , հապա ես կը դնեմ անիկայ
ինքիրմէս . իշխանութիւն ունիմ
անիկայ դնելու , և իշխանութիւն
ունիմ անիկայ նորէն առնելու .
աս պատուէրը իմ Հօրմէս առի ։
19 Նորէն երկպառակութիւն կ՚ըլ-
լար Հրէից մէջ աս խօսքերուն հա-
20 մար ։ Եւ անոնցմէ շատերը կ՚ը-

Ցամ Տեառն 32

Գլ. ժդ. 6 ։ Եփե. բ. 18 ։
Ես. խ. 11 ։ Եզեկ. լդ. 12. 23 ։ լէ. 24 ։ Եբր. ժգ. 20 ։ Պետ. բ. 25 ։ ե. 4 ։
Զաք. ժա. 16 ։ 17 ։
Բ Տիմ. բ. 19 ։
Մատ. ժա. 27 ։
Գլ. ժե. 13 ։
Ես. ծզ. 8 ։
Եզեկ. լէ. 22 ։ Եփե. բ. 14 ։ Պետ. բ. 25 ։
Ես. ծգ. 7. 8. 12 ։ Եբր. բ. 9 ։
Գլ. բ. 19
Գլ. գ. 38 ։ ժե. 10 ։ Գոր. բ. 24 ։ 32 ։
Գլ. է. 43 ։ թ. 16 ։

Յամի Տեառն 32

ի Գլ. է. 20 ։ ը. 48 ։ 52 ։
ծ Ել. դ. 11 ։ Սաղ. ղդ. 9 ։ ճխզ. 8 ։
Յա. Տ. 33
կ Գլ. թ. 6 ։ 7 ։ 32 ։ 33 ։
ճ Գործ. գ. 11 ։ ե. 12 ։
յ Հմր 38 ։ Գլ. գ. 2 ։ ե. 36 ։
ն Գլ. ը. 47 ։ Ա Յով. դ. 6 ։
* [illegible]
* Հմր 4 ։ 14 ։
Գլ. զ. 37 ։ ժէ. 11 ։ 12 ։ ժը. 9 ։
Գլ. ժդ. 28 ։
Գլ. ժէ. 2 ։ 6 ։ Ա. ։
շ Գլ. ժէ. 11 ։ 22 ։
ո Գլ. ը. 59 ։
չ Գլ. ե. 18 ։
պ Սաղ. ձբ. 6 ։
ջ Հռովմ. ժգ. 1 ։
ռ Գլ. զ. 27 ։
ս Գլ. դ. 17 ։ ե. 36 ։ 37 ։ ը. 42 ։
վ Ղու. ա. 35 ։ Գլ. թ. 35 ։ 37 ։
տ Գլ. ե. 17 ։ 18 ։ Հմր 30 ։
ր Գլ. ժե. 24 ։
ց Գլ. ե. 36 ։ ժդ. 10—12 ։
ւ Գլ. ժդ. 10 ։ 11 ։ ժէ. 21 ։
փ Գլ. է. 30 ։ 44 ։ ը. 59 ։

սէին . [ի]Դեւ կայ ատոր ներսիդին՝
ու խելառած է , ինչո՞ւ ատոր մտիկ
21 կ'ընէք ։ Ուրիշները կ'ըսէին . Աս
խօսքերը դիւահարի խօսքեր չեն .
մի՞թէ [ծ]դեւը կրնա՞յ կոյրերուն աչ-
քերը բանալ ։
22 Ան ատենը Երուսաղէմ Նաւա-
կատիքի տօնը եղաւ , ու ձմեռ էր ։
23 Եւ Յիսուս կը պտըտէր տաճարին
24 մէջ [ճ]Սողոմոնին սրահը ։ Եւ Հը-
րէաները անոր չորս կողմը առին՝ ու
ըսին անոր . Մինչեւ ե՞րբ մեզ տա-
րակուսանաց մէջ կը թողուս . թէ
որ Քրիստոսը դուն ես , մեզի հա-
25 մարձակ ըսէ ։ Յիսուս պատաս-
խան տուաւ անոնց . Ձեզի ըսի՝ ու
չէք հաւատար . [յ]Այն գործքերը՝ որ
ես իմ Հօրս անունովը կը գործեմ ,
անոնք կը վկայեն ինծի համար ։
26 [ն]Բայց դուք չէք հաւատար , ինչու
որ իմ ոչխարներէս չէք , [*]ինչպէս որ
27 ձեզի ըսի" ։ [*]Իմ ոչխարներս իմ
ձայնիս կը լսեն , ես ալ անոնք կը
ճանչնամ , ու իմ ետեւէս կու գան ։
28 Եւ ես անոնց յաւիտենական կեանք
կու տամ , ու յաւիտեան պիտի
չկորսուին . և մէկը իմ ձեռքէս
29 պիտի չյափշտակէ զանոնք ։ Իմ
Հայրս որ անոնք ինծի տուաւ , ա-
մենէն մեծ է . և մէկը չկրնար իմ
30 Հօրս ձեռքէն յափշտակել ։ [շ]Ես
ու Հայրը մէկ ենք ։
31 Ան ատենը [ո]Հրէաները նորէն
քարեր վերցուցին , որ անիկայ
32 քարկոծեն ։ Յիսուս պատասխան
տուաւ անոնց . Շատ բարի գործ-
քեր ցուցուցի ձեզի իմ Հօրմէս ,
անոնցմէ ո՞ր գործին համար զիս կը
33 քարկոծէք ։ Հրէաները պատաս-
խան տուին անոր՝ ըսելով . Բարի
գործի համար քեզ չենք քար-
կոծեր , հապա հայհոյութեան հա-
մար , և քանզի դուն որ մարդ ես ,
[չ]ինքզինքդ Աստուած կ'ընես ։
34 Յիսուս պատասխան տուաւ անոնց .
[պ]Չէ՞ որ ձեր օրէնքին մէջը գրուած
է . Ես ըսի թէ դուք աստուածներ
35 էք ։ [ջ]Թէ որ աստուածներ կ'անուա-
նէ զանոնք , [ռ]որոնց որ Աստուծոյ
խօսքը եղաւ , (ու կարելի չէ որ ան
36 գրուածը աւրուի , ) [ս]հապա ան որ
Հայրը սրբեց՝ [վ]և աշխարհք խրկեց ,
դուք անո՞ր կ'ըսէ՞ք թէ հայհոյու-
թիւն կ'ընես , [տ]Աստուծոյ Որդի
37 եմ [ր]ըսելուս համար ։ [ց]Թէ որ իմ
Հօրս գործքերը չեմ գործեր , ինծի
38 մի՛ հաւատար . Հապա թէ որ կը
գործեմ , թէեւ ինծի չէք հաւա-
տար , [ւ]գոնէ գործքերուն հաւա-
տացէք , որ գիտնաք ու ճանչնաք՝
[փ]թէ Հայրը իմ մէջս է , և ես անոր
մէջ ։
39 [ք]Դարձեալ կը փնտռէին զանի-
կայ բռնել , և անոնց ձեռքէն ելաւ ։
40 Ու նորէն գնաց Յորդանանու ան-
դին կողմը՝ ան տեղը , [*]ուր որ Յով-
հաննէս առաջուց կը մկրտէր , ու
41 հոն կեցաւ ։ Եւ շատերը եկան
անոր՝ ու կ'ըսէին . Իրաւ Յով-
հաննէս մէկ հրաշք մը չըրաւ .
42 [°]Բայց ինչ որ Յովհաննէս ըսաւ ա-
նոր համար , ամէնը ճշմարիտ էր .
[$]և շատ մարդիկ հոն անոր հաւա-
տացին ։

## ԳԼ. ԺԱ

1 Քրիստոս կը յարուցանէ չորս օրուան մեռած Ղազարոսը ։ 45 Շատ Հրէաներ կը հաւատան ։ 47 Քահանայապետները և փարիսեցիք ժողով կ'ընեն Քրիստոսի դէմ ։ 49 Կայիափային մարգարէութիւնը ։ 54 Յիսուս իր անձը կը թագուցանէ ։ 55 Զատկի տօնին կը փնտռեն զանիկայ , և պատուէր կու տան բռնելու ։

1 Ու [ա]Մարիամին և անոր քրոջը
Մարթային գեղէն՝ Բեթանիա-
յէն՝ Ղազարոս անունով մէկը հի-
2 ւանդ էր ։ [բ]Ասիկայ ան Մարիամն
էր , որ Տէրը եղով օծեց , ու անոր
ոտքերը իր մազերովը սրբեց , որուն
եղբայրը Ղազարոս հիւանդ էր ։
3 Ուստի իր քոյրերը մարդ խրկեցին
անոր՝ ու ըսին . Տէ՛ր՝ ահա անիկայ՝
որ դուն կը սիրես , հիւանդ է ։
4 Յիսուս երբոր լսեց , ըսաւ . Աս
հիւանդութիւնը մահուան համար
չէ , [գ]հապա Աստուծոյ փառացը
համար , որ Աստուծոյ Որդին անով
5 փառաւորուի ։ Արդ՝ Յիսուս կը
սիրէր Մարթան՝ և անոր քոյրը՝ ու
6 Ղազարոսը ։ Իսկ երբոր լսեց թէ
հիւանդ է , եղած տեղը [դ]երկու օր
7 ալ կեցաւ ։ Եւ անկէ ետքը ըսաւ
աշակերտներուն . Եկէ՛ք նորէն Հը-
8 րէաստան երթանք ։ Աշակերտները
իրեն ըսին . Ռաբբի՝ [ե]Հրէաները
հիմա քեզ կը փնտռէին քարկոծե-
լու , ու նորէն հո՞ն կ'երթաս ։
9 Պատասխան տուաւ Յիսուս . Չէ՞
որ օրը տասներկու ժամ է . [զ]Թէ
որ մէկը ցորեկը քալէ , չսահիր .
ինչու որ աս աշխարհիս լոյսը կը
10 տեսնէ . [է]Բայց թէ որ մէկը գիշերը
քալէ , կը սահի . ինչու որ իր
11 հետը լոյս չկայ ։ Աս բաները ըսե-
լէն ետեւ՝ ըսաւ անոնց . Ղազարոս
մեր բարեկամը [ը]քնացած է . բայց
կ'երթամ որ անիկայ արթնցը-
12 նեմ ։ Իր աշակերտները ըսին .
Տէ՛ր՝ թէ որ քնացած է , պիտի ա-
13 ողջանայ ։ Իսկ Յիսուս անոր
մեռնելուն համար կ'ըսէր . բայց ա-
նոնք կը կարծէին թէ քուն քնա-
14 նալուն համար կ'ըսէր ։ Ան ատենը
Յիսուս յայտնապէս ըսաւ անոնց .
15 Ղազարոս մեռաւ . Եւ ես ուրախ
եմ ձեզի համար՝ որ հոն չէի , որ
դուք հաւատաք . բայց եկէ՛ք եր-
16 թանք անոր ։ Թովմաս՝ որ Եր-

Յամի Տեառն 33

* Գլ. ա. 28 ։
° Գլ. գ. 30 ։
$ Գլ. ը. 30 ։ ժա. 45 ։
ա Ղու. ժ. 38 ։ 39 ։
բ Մատ. իզ. 7 ։ Մար. ժդ. 3 ։ Գլ. ժբ. 3 ։
գ Գլ. թ. 3 ։ Հմր 40 ։
դ Գլ. ժ. 40 ։
ե Գլ. ժ. 31 ։
զ Գլ. թ. 4 ։
է Գլ. ժբ. 35 ։
ը Օր. լա. 16 ։ Դան. ժբ. 2 ։ Մատ. թ. 24 ։ Գործ. է. 59 ։ Ա Կոր. ժե. 18 ։ 51 ։

Յամ. Տեառն 33

կուորեակ կ'ըսուէր , ըսաւ իր աշա-
կերտակիցներուն . Մենք ալ եր-
թանք՝ որ անոր հետը մեռնինք ։
17 Յիսուս երբոր եկաւ , գտաւ որ
անիկայ արդէն չորս օրուան գե-
18 րեզմանը դրուած էր ։ Ու Բե-
թանիա՝ Երուսաղեմին մօտ էր՝
տասնուհինգ ասպարէզի չափ ։
19 Եւ Հրէաներէն շատերը Մար-
թային ու Մարիամին եկած էին
որ մխիթարեն զանոնք՝ իրենց եղ-
20 բօրը համար ։ Արդ՝ երբոր լսեց
Մարթա թէ Յիսուս կու գայ ,
զանիկայ դիմաւորելու գնաց . բայց
Մարիամ տանը մէջ նստեր էր ։
21 Եւ Մարթա ըսաւ Յիսուսին . Տէ՛ր
թէ որ հոս ըլլայիր , իմ եղբայրս
22 չէր մեռներ . Բայց գիտեմ որ հի-
մա ալ դուն ինչ որ խնդրես Աս-
տուծմէ , Աստուած պիտի տայ
23 քեզի ։ Յիսուս ըսաւ անոր . Քու
եղբայրդ յարութիւն պիտի առնէ ։
24 Մարթա ըսաւ անոր . Գիտեմ որ
յարութեան ժամանակը՝ վերջին
օրը յարութիւն պիտի առնէ ։
25 Յիսուս ըսաւ անոր . Ես եմ յա-
րութիւնը և կեանքը . Ան որ
ինծի կը հաւատայ , թէև մեռնի՝
26 պիտի ապրի . Եւ ան ամէնը որ
կենդանի է՝ ու ինծի կը հաւատայ ,
յաւիտեան պիտի չմեռնի . Դուն
27 կը հաւատա՞ս ասոր ։ Ըսաւ անոր .
Այո Տէ՛ր՝ ես հաւատացեր եմ՝
որ դուն ես Քրիստոսը Աստուծոյ
Որդին , որ աշխարհք գալու էիր ։
28 Ու երբոր աս ըսաւ , գնաց իր քոյ-
րը Մարիամը գաղտուկ մը կանչեց՝
ըսելով . Վարդապետը եկեր է՝ ու
29 քեզ կը կանչէ ։ Անիկայ լսածին
պէս՝ շուտ մը ելաւ ու եկաւ անոր ։
30 Իսկ Յիսուս դեռ գեղը եկած չէր .
հապա ան տեղն էր , ուր որ Մար-
31 թա զանիկայ դիմաւորեց ։ Բայց
Հրէաները որ անոր հետը տանը
մէ՛ն էին՝ ու կը մխիթարէին զա-
նիկայ , երբոր տեսան որ Մարիամ
շուտ մը ելաւ ու գնաց , իրենք ալ
անոր ետեւէն գացին , ըսելով թէ
Գերեզմանը կ'երթայ՝ որ հոն տեղը
32 լայ ։ Իսկ Մարիամ երբոր Յի-
սուսին եղած տեղը եկաւ , ու զա-
նիկայ տեսաւ , անոր ոտքը իյնա-
լով ըսաւ անոր . Տէ՛ր թէ որ հոս
ըլլայիր , իմ եղբայրս չէր մեռներ ։
33 Յիսուս երբոր տեսաւ անիկայ որ
կու լար , և անոր հետ եկող Հրէ-
աները որ կու լային , իր հոգւոյն
34 մէջ հառաչեց ու խռովեցաւ , Եւ
ըսաւ . Ո՞ւր դրած էք անիկայ .
ըսին իրեն . Տէ՛ր եկուր ու տես ։
35 Յիսուս լացաւ ։ (36) Ուստի
Հրէաները կ'ըսէին . Նայեցէք
37 որչափ կը սիրէր զանիկայ ։ Ա-
նոնցմէ ոմանք ալ կ'ըսէին . Ասի-
կայ որ կոյրին աչքերը բացաւ ,
չէ՞ր կրնար ընել որ աս ալ չմեռ-
38 նէր ։ Յիսուս նորէն իր սրտին մէջ
հառաչելով՝ գերեզմանը կու գայ .
և անիկայ քարայր մըն էր , ու անոր
39 վրայ քար մը դրուած էր ։ Յիսուս
ըսաւ . Մէկդի ըրէք ատ քարը .
մեռելին քոյրը Մարթան ըսաւ ա-
նոր . Տէ՛ր արդէն հոտած պիտի
ըլլայ , ինչու որ չորս օրուան է ։
40 Ըսաւ անոր Յիսուս . Քեզի չըսի՞
որ՝ եթէ հաւատաս , Աստուծոյ
41 փառքը պիտի տեսնես ։ Ան ա-
տենը մէկդի ըրին քարը . և Յի-
սուս իր աչքերը վեր վերցուց ու
ըսաւ . Հայր՝ շնորհակալ եմ քեզ-
42 մէ , որ ինծի լսեցիր ։ Ու ես գի-
տէի որ ամէն ատեն ինծի կը լսես .
բայց աս բոլորտիքս կայնող ժո-
ղովուրդին համար ըսի , որ հաւա-
43 տան թէ դուն խրկեցիր զիս ։ Եւ
աս ըսելէն ետքը , մեծ ձայնով մը
կանչեց . Ղազարոս դուրս եկուր ։
44 Մեռելն ալ ելաւ ոտքերը ու ձեռ-
քերը պատանքով կապած , և ե-
րեսը վարշամակով պատած . Յի-
սուս ըսաւ անոնց . Արձըկեցէք
ատիկայ , ու թողէք որ երթայ ։
45 Եւ Հրէաներէն շատերը՝ որ Մա-
րիամին եկեր էին , երբոր Յիսու-
սին ըրածը տեսան , հաւատացին
46 իրեն ։ Բայց անոնցմէ ոմանք գա-
ցին փարիսեցիներուն , ու Յիսուսի
ըրածը անոնց պատմեցին ։
47 Ուստի քահանայապետները և
փարիսեցիները ժողով գումարեցին
ու ըսին . Ի՞նչ ընենք , քանզի աս
48 մարդը շատ հրաշքներ կ'ընէ ։ Թէ
որ անիկայ ասանկ թող տանք , ա-
մէնքն ալ անոր պիտի հաւատան ,
և Հռովմայեցիք պիտի գան՝ ու մեր
տեղը ու ազգը պիտի վերցընեն ։
49 Եւ անոնցմէ մէկը Կայիափա ա-
նունով՝ որ ան տարւոյն քահանա-
յապետն էր , ըսաւ անոնց . Դուք
50 բան մը չէք գիտեր . Եւ չէք ալ
խորհիր , թէ աղէկ է մեզի՝ որ մէկ
մարդ մը ժողովուրդին համար մեռ-
51 նի , ու բոլոր ազգը չկորսուի ։ Բայց
աս բանը չէ թէ ինքիրմէն զրու-
ցեց , հապա ան տարուան քահա-
նայապետը ըլլալով , մարգարէա-
ցաւ՝ թէ Յիսուս ազգին համար
52 պիտի մեռնէր . Եւ չէ թէ մինակ
ազգին համար , հապա որ Աստու-
ծոյ ցիրուցան եղած որդիներն ալ
մէկտեղ ժողվէ ։
53 Ալ ան օրէն ետև խորհուրդ ըրին
54 որ սպաննեն զանիկայ ։ Ուստի
Յիսուս անկէ ետքը համարձակ չէր
պտըտեր Հրէից մէջ . հապա ան-
կէ անապատին մօտ տեղ մը գնաց .

Յամ. Տեառն 33

Յամի Տեառն 33

ՎՏեսք Մն. ժգ. 19։ Գլ. բ. 13։ ե. 1։ զ. 4։
բ Հմր Տ։

մէկ քաղաք մը՝ որուն անունը
Եփրայիմ էր. ու իր աշակերտնե-
րուն հետ մէկտեղ հոն կը կենար ։
55 Եւ Հրէից զատիկը մօտ էր, ու
ան տեղէն շատ մարդիկ զատկէն
առաջ Երուսաղէմ ելան, որ ինք-
56 զինքնին մաքրեն. Եւ կը փնտռէին
Յիսուսը, ու տաճարին մէջ կեցած
ատեննին իրարու կ'ըսէին. Ձեզի
ի՞նչպէս կ'երեւնայ, թէ տօնիս
բնաւ պիտի չգա՞յ ։ Իսկ քահանա-
յապետները ու փարիսեցիները պա-
տուէր տուեր էին, որ եթէ մէկը
գիտնայ անոր ո՛ւր տեղ ըլլալը՝ ի-
մացընէ, որ անիկայ բռնեն ։

ԳԼ. ԺԲ

1 Յիսուս կը գովէ Մարիամը՝ որ իր ոտքը օծեց ։ 9 Ժողովուրդը կու գայ Ղազարոսը տեսնելու ։ 10 Քահանայապետները խորհուրդ կ'ընեն զանիկայ սպաննելու ։ 12 Քրիստոս իշու վրայ հեծած՝ Երուսաղէմ կը մտնէ ։ 20 Քանի մը Յոյներ կը ցանկան զինքը տեսնելու ։ 23 Քրիստոս իր մահը կը նախածայնէ ։ 37 Հրէից կուրութիւնը ։ 42 Իշխաններէն շատերը կը հաւատան Յիսուսին, բայց փարիսեցիներէն վախնալով՝ զանիկայ յայտնի չեն դաւանիր ։

Գլ. ժա. 1, 43։
Մատ. իզ. 6։ Մար. ժդ. 3։
Ղու. ժ. 38, 39։ Գլ. ժա. 2։
Գլ. ժգ. 29։
Մատ. իզ. 11։ Մար. ժդ. 7։
Գլ. ժա. 43, 44։
Ղու. ժզ. 31։
Գլ. ժա. 45։ Հմր. 18։

1 Իսկ Յիսուս զատկէն վեց օր առաջ
Բեթանիա եկաւ, ուր էր Ղա-
զարոս՝ մեռեալը, որն որ Յիսուս
2 մեռելներէն յարուց ։ Եւ հոն ա-
նոր ընթրիք մը ըրին. ու Մարթա
սպասաւորութիւն կ'ընէր, և Ղա-
զարոս անոր հետ սեղան նստողնե-
3 րուն մէկն էր ։ Իսկ Մարիամ մէկ
լիտր նարդոսի պատուական մեծա-
գին եղ առնելով, Յիսուսի ոտ-
քերը օծեց, ու իր մազերովը անոր
ոտքերը սրբեց. և տունը եղին
անուշահոտութեամբը լեցուեցաւ.
4 Ան ատենը աշակերտներուն մէկը
Իսկարիովտացի Սիմոնեան Յու-
դան՝ որ զանիկայ պիտի մատնէր,
5 ըսաւ. Ինչո՞ւ համար աս եղը չը-
ծախուեցաւ իրեք հարիւր դահեկա-
նի, որ աղքատներուն տրուէր ։
6 Աս ըսաւ, չէ՛ թէ աղքատներուն
համար իր հոգն էր, հապա որ գող
էր, ու գանձանակը ինքը կը պա-
հէր, և ինչ որ ձգուէր՝ ինքը կը
7 կրէր ։ Իսկ Յիսուս ըսաւ. Թո՛ղ
տուր ատոր. աս բանը իմ պա-
տանքուելուս օրուանը համար պա-
8 հեց ։ Վասն զի աղքատները ամէն
ատեն ձեր հետը ունիք, բայց զիս
ամէն ատեն չունիք ։
9 Ուստի Հրէաներէն շատ ժողո-
վուրդ անոր հոն ըլլալը իմացան.
ու եկան, չէ՛ թէ մինակ Յիսուսի
համար, հապա որ Ղազարոսն ալ
տեսնեն, որն որ մեռելներէն յա-
10 րուց ։ Իսկ քահանայապետները
խորհուրդ ըրին՝ որ Ղազարոսն ալ
11 մեռցընեն. Ինչու որ Հրէաներէն
շատերը անոր պատճառովը կ'եր-

Յամի Տեառն 33

Մատ. իա. Տ։ Մար. ԺԱ. Տ։ Ղու. ժթ. 35, 36։
Սաղ. ճժը. 25, 26։
Մատ. իա. 7։
Զաք. թ. 9։
Ղու. ժը. 34։
Գլ. է. 39։
Գլ. ժդ. 26։
Հմր 11։
Գլ. ժա. 47, 48։
Գոր. ժէ. 4։
Գ Թագ. ը. 41, 42։
Գոր. ը. 27։
Գլ. ա. 44։
Գլ. ժգ. 32։ ժէ. 1։
Ա Կոր. ժե. 36։
Մատ. ժ. 39։ ժզ. 25։ Մար. ը. 35։ Ղու. թ. 24։ ժէ. 33։
Գլ. ժդ. 3։ ժէ. 24։
Ա Թես. դ. 16։
Մատ. իզ. 38, 39։ Ղու. ժբ. 50։ Գլ. ժգ. 21։
Ղու. իբ. 53։ Գլ. ժը. 37։

թային ու կը հաւատային Յիսու-
սին ։
12 Հետեւեալ օրը շատ ժողովուրդ՝
որ տօնին եկած էին, երբոր լսեցին
թէ Յիսուս Երուսաղէմ կու գայ,
13 Արմաւենիի ոստեր առին, ու ե-
լան զանիկայ դիմաւորելու, և կ'ա-
ղաղակէին. Ովսաննա՛ օրհնեալ է
Իսրայէլի թագաւորը՝ որ Տէրոջը
14 անունովը կու գայ ։ Եւ Յիսուս
աւանակ մը գտնելով՝ անոր վրայ
նստաւ, ինչպէս որ գրուած է.
15 Մի՛ վախնար ո՛վ Սիօնի աղջիկ.
ահա՛ քու թագաւորդ կու գայ իշու
16 աւանակի վրայ նստած ։ Եւ անոր
աշակերտները առաջ չիմացան աս
բաները. բայց երբոր Յիսուս փա-
ռաւորուեցաւ, ան ատենը միտքեր-
նին բերին, թէ աս բաները անոր
համար գրուած էր, և թէ իրե՛նք աս
17 բաները ըրին անոր ։ Եւ իր հետը
եղող ժողովուրդը վկայութիւն կու-
տար, թէ Ղազարոսը գերեզմանէն
դուրս կանչեց, ու մեռելներէն յա-
18 րուց զանիկայ ։ Ասոր համար ալ
ժողովուրդը զանիկայ դիմաւորեց.
վասն զի լսեցին թէ անիկայ աս
19 հրաշքը ըրած էր ։ Իսկ փարիսե-
ցիները իրարու կ'ըսէին. Կը տես-
նէ՞ք որ օգուտ մը չէք ըներ ընել.
ահա՛ բոլոր աշխարհ անոր ետեւէն
գնաց ։
20 Եւ հոն քանի մը Յոյներ կային
տօնին երկրպագութիւն ընելու
21 ելլողներուն մէջ ։ Ասոնք Փիլիպպո-
սին եկան՝ որ ինքը Գալիլեայի
Բեթսայիդայէն էր, և կ'աղաչէին
անոր՝ ու կ'ըսէին. Տէ՛ր՝ կ'ուզենք
22 Յիսուսը տեսնել ։ Փիլիպպոս ե-
կաւ՝ ու Անդրէասին ըսաւ. և նո-
րէն Անդրէաս ու Փիլիպպոս մէկտեղ
23 Յիսուսին ըսին ։ Յիսուս ալ պա-
տասխան տուաւ անոնց՝ ու ըսաւ.
Ժամանակը հասաւ, որ փառաւո-
24 րուի Որդին մարդոյ ։ Ճշմարիտ
ճշմարիտ կ'ըսեմ ձեզի. Թէ որ
ցորենին հատը հողին մէջ իյնալով
25 չմեռնի, ինքը մինակ կը մնայ.
հապա թէ որ մեռնի, շատ ար-
դիւնք կը բերէ ։ Ան որ իր անձը
կը սիրէ, պիտի կորսընցընէ զանի-
կայ. և ան որ իր անձը աս աշ-
խարհիս մէջ կ'ատէ, յաւիտենա-
կան կենաց համար պիտի պահէ զա-
26 նիկայ ։ Թէ որ մէկը ինծի կը
ծառայէ, թող իմ ետեւէս գայ.
ու ես ո՛ւր որ եմ, իմ ծառաս ալ
հոն պիտի ըլլայ. Թէ որ մէկը ին-
ծի կը ծառայէ, Հայրը պիտի պա-
27 տուէ զանիկայ ։ Հիմա իմ հոգիս
խռոված է. և ի՞նչ ըսեմ, թէ
Հայր՝ զիս ազատէ աս ժամէն.
բայց ես ասոր համար եկայ աս

Յամի Տեառն
33

ՂՄատ. Գ. 17 ։
⁻Գլ. ԺԱ. 42 ։
"Մատ. ԺԲ. 29 ։ Ղու. Ժ. 18 ։ Գլ. ԺԴ. 30 ։ ԺԶ. 11 ։ Գոր. ԻԶ. 18 ։ Բ Կոր. Դ. 4 ։ Եփե. Բ. 2 ։ Զ. 12 ։
ՂԳլ. Գ. 14 ։ Ը. 28 ։
⁼Հռով. Ե. 18 ։ Եբր. Բ. 9 ։
ՐԳլ. ԺԸ. 32 ։
ՅՍաղ. ՃԹ. 36, 37 ։ ՃԺ. 4 ։ Ես. Թ. 7 ։ ԾԴ. 8 ։ Եզեկ. ԼԵ. 25 ։ Դան. Բ. 44 ։ Է. 14, 27 ։ Միք. Դ. 7 ։
⁻Գլ. Ա. 9 ։ Ը. 12 ։ Թ. 5 ։ Հմր 46 ։
ՙԵրեմ. ԺԳ. 16 ։ Եփե. Ե. 8 ։
⁺Գլ. ԺԱ. 10 ։ Ա Յով. Բ. 11 ։
°Ղու. ԺԶ. 8 ։ Եփե. Ե. 8 ։ Ա Թես. Ե. 5 ։ Ա Յով. Բ. 9, 10, 11 ։
ՙԳլ. Ը. 59 ։ ԺԱ. 54 ։
"Ես. ԾԳ. 1 ։ Հռով. Ժ. 16 ։
ՒԵս. Զ. 9, 10 ։ Մատ. ԺԳ. 14 ։
ՙԵս. Զ. 1 ։
⁼Գլ. Է. 13 ։ Թ. 22 ։
ՒԳլ. Ե. 44 ։
ՂՄար. Թ. 36 ։ Ա Պետ. Ա. 21 ։
ՒԳլ. ԺԴ. 9 ։
ԸՀմր 35, 36 ։ Գլ. Գ. 19 ։ Ը. 12 ։ Թ. 5, 39 ։

28 ժամին ։ Հայր՝ փառաւորէ՛ քու ա-
նունդ ։ Ղան ատենը ձայն մը եկաւ
երկինքէն ։ Փառաւորեցի ալ , ու
29 նորէն պիտի փառաւորեմ ։ Եւ
ժողովուրդը որ կայներ էր ու կը
լսէր , կ'ըսէին՝ Որոտում կ'ըլլայ ։
ոմանք ալ կ'ըսէին՝ Հրեշտակ խօ-
30 սեցաւ իրեն հետ ։ Յիսուս պա-
տասխան տուաւ ու ըսաւ ։ ⁻Աս
ձայնը ինծի համար չեկաւ , հապա
31 ձեզի համար ։ Հիմա է աս աշ-
խարհիս դատաստանը , հիմա աս
աշխարհիս "իշխանը դուրս պիտի
32 ձգուի ։ ՂԵս ալ երբոր երկրէն
բարձրանամ , ⁼ամէնն ալ ինծի
33 պիտի քաշեմ ։ ՐԱս բանս կը զրու-
ցէր՝ իմացընելով թէ ինչ կերպ մա-
34 հով պիտի մեռնէր ։ Ժողովուրդը
անոր պատասխանեց ։ ՅՄենք օրէն-
քէն լսեցինք՝ որ Քրիստոսը յաւի-
տեան կը մնայ , և դուն ինտո՞ր
կ'ըսես թէ պէտք է Որդին մարդոյ
բարձրանայ ։ ո՞վ է աս Որդին մար-
35 դոյ ։ Եւ Յիսուս անոնց ըսաւ ։ Քիչ
մը ատեն ալ ⁻լոյսը ձեր հետն է ։
ՙքանի որ լոյսը ունիք՝ քալեցէ՛ք ,
որ չըլլայ թէ մութը ձեր վրայ հաս-
նի ։ ⁺ինչու որ խաւարի մէջ քալողը
36 չգիտեր թէ ուր կ'երթայ ։ Քանի
որ լոյսը ունիք , հաւատացէ՛ք ան
լոյսին՝ °որ լուսոյ որդիք ըլլաք ։
Յիսուս աս բաները զրուցեց , ու
գնաց ՙպահուեցաւ անոնցմէ ։
37 Եւ թէպէտ այնքան հրաշքներ
ըրած էր անոնց առջևը , ⁼այց ա-
38 նոնք չէին հաւատար իրեն ։ Որ
կատարուի Եսայի մարգարէին խօս-
քը , որ ըսաւ ։ "Տէ՛ր՝ ո՞վ հաւա-
տաց մեր ⁼ու⁼ծ լուրին , ու Տէրոջը
39 բազուկը որո՞ւ յայտնուեցաւ ։ Ա-
նոր համար չէին կրնար հաւատալ ,
40 որ դարձեալ կ'ըսէ Եսայի ։ ՒԱնոնց
աչքերը կուրցուց , և անոնց սիր-
տերը թմրեցուց , որ չըլլայ թէ
աչքովին տեսնեն , ու սրտովին
իմանան , և դարձի գան , ու ես
41 անոնք բժշկեմ ։ ՙԱս խօսքը ըսաւ
Եսայի՝ երբոր տեսաւ անոր փառ-
քը , ու խօսեցաւ անոր վրայով ։
42 Այսու ամենայնիւ իշխաններէն ալ
շատերը իրեն հաւատացին ։ ⁼բայց
փարիսեցիներուն համար զանիկայ
չէին դաւաներ , որ ժողովարանէն
43 դուրս չձգուին ։ Ւինչու որ մարդոց
փառքը Աստուծոյ փառքէն աւելի
սիրեցին ։
44 Իսկ Յիսուս կ'աղաղակէր ու կ'ը-
սէր ։ ՂԱն որ ինծի կը հաւատայ՝
ինծի չհաւատար , հապա զիս խըր-
45 կողին ։ ՒԵւ ան որ զիս կը տեսնէ ,
46 զիս խրկողը կը տեսնէ ։ ԸԵս լոյս
եկայ աշխարհ , որ ամէն ով որ
ինծի հաւատայ , խաւարի մէջ չը-
47 մնայ ։ Եւ թէ որ մէկը իմ խօսքերս
լսէ՝ ու չհաւատայ , Րես անիկայ
չեմ դատեր ։ ծքանզի ես չեկայ որ
աշխարհը դատեմ , հապա որ աշ-
48 խարհը փրկեմ ։ ՒԱն որ զիս կ'ա-
նարգէ , և իմ խօսքերս չընդունիր ,
կայ մէկը որ զանիկայ կը դատէ ։
Ղան խօսքը որ ես խօսեցայ , ան
պիտի դատէ զանիկայ վերջին օրը ։
49 Ինչու որ Ւես ինքիրմէս չխօսեցայ ։
հապա Հայրը՝ որ զիս խրկեց , ին-
քը ինծի պատուիրեց ծինչ որ պի-
տի ընեմ՝ և ինչ որ պիտի խօսիմ ։
50 Եւ գիտեմ՝ որ անոր պատուիրածը
յաւիտենական կեանք է ։ ուստի
ինչ որ ես կը խօսիմ , ինտոր որ
Հայրը ինծի ըսաւ , անանկ կը խօ-
սիմ ։

## ԳԼ. ԺԳ

1 Յիսուս իր աշակերտներուն ոտքերը կը լուայ, յորդորելով զանոնք որ խոնարհութեամբ և սիրով վարուին իրարու հետ ։ 18 կը Նախաձայնէ Յուդային զինքը մատնելը , և մէկ նշանով մը մատնիչին ով ըլլալը կը յայտնէ Յովհաննէսին ։ 31 կը պատուիրէ իր աշակերտներուն մէկզմէկ սիրել , 36 և կ'իմացընէ Պետրոսին՝ թէ պիտի ուրանայ զինքը ։

1 ⁻Զատկի տօնէն առաջ՝ Յիսուս
գիտնալով թէ Բիր ժամանա-
կը հասեր է՝ որ աս աշխարհէս ելլէ
Հօրը քովը , սիրելով իրենները որ
աշխարհի մէջ էին , մինչև վերջն
ալ սիրեց զանոնք ։
2 Եւ ընթրիքը որ կ'ըլլար , (ՙՍա-
տանան արդէն Իսկարիովտացի Սի-
մոնեան Յուդային սրտին մէջը դը-
3 րեր էր , որ զանիկայ մատնէ ։) Յի-
սուս գիտնալով թէ ⁼Հայրը ամէն
բան իր ձեռքը տուաւ , Ւև թէ ին-
քը Աստուծմէ ելաւ՝ ու Աստուծոյ
4 քովը կ'երթայ , Ղընթրիքէն ելաւ ,
և հանդերձները մէկդի դրաւ , ու
ղենջակ մը առնելով մէջքը փաթ-
5 թեց ։ Ետքը կոնքին մէջ ջուր լե-
ցուց , ու սկսաւ աշակերտներուն
ոտքերը լուալ , և ան իր փաթ-
6 թուած ղենջակովը սրբել ։ Ուս-
տի եկաւ Սիմոն Պետրոսին ։ ան
ալ ըսաւ անոր ։ Տէ՛ր՝ Ւդո՞ւն իմ
7 ոտքերս պիտի լուաս ։ Յիսուս
պատասխան տուաւ ու ըսաւ ա-
նոր ։ Ես ինչ որ կ'ընեմ՝ դուն հի-
մա չես իմանար , Ըհապա ետքը պի-
8 տի իմանաս ։ Պետրոս ըսաւ անոր ։
Բնաւ դուն իմ ոտքերս պիտի չը-
լուաս ։ պատասխան տուաւ անոր
Յիսուս ։ Րթէ որ քեզ չլուամ ,
դուն ինծի հետ բաժին չունիս ։
9 Սիմոն Պետրոս ըսաւ անոր ։ Տէ՛ր՝
չէ՛ թէ մինակ ոտքերս , հապա նաև
10 ձեռքե՛րս ու գլուխս ։ Յիսուս ը-
սաւ անոր ։ Լուացուածին՝ ոտքերը
լուալէն 'ի զատ ուրիշ բան պէտք
չէ , այլ բոլորովին մաքուր է ։ և

Յամի Տեառն
33

ՐԳլ. Ե. 45 ։ Ը. 15, 26 ։
ծԳլ. Գ. 17 ։
ՒՂու. Ժ. 16 ։
ՂԲ Օր. ԺԸ. 19 ։ Մար. ԺԶ. 16 ։
ՒԳլ. Ը. 38 ։ ԺԴ. 10 ։
ծԲ Օր. ԺԸ. 18 ։
⁻Մատ. ԻԶ. 2 ։
ԲԳլ. ԺԲ. 23 ։ ԺԵ. 1, 11 ։
ՙՂու. ԻԲ. 3 ։ Հմր 27 ։
⁼Մատ. ԺԱ. 27 ։ ԻԸ. 18 ։ Գլ. Գ. 35 ։ ԺԷ. 2 ։ Գոր. Բ. 36 ։ Ա Կոր. ԺԵ. 27 ։ Եբր. Բ. 8 ։
ՒԳլ. Ը. 42 ։ ԺԶ. 28 ։
ՂՂու. ԻԲ. 27 ։ Փիլ. Բ. 7, 8 ։
ՒՏե՛ս Մատ. Գ. 14 ։
ԸՀմր 12 ։
ՐԳլ. Գ. 5 ։ Ա Կոր. Զ. 11 ։ Եփե. Ե. 26 ։ Տիտ. Գ. 5 ։ Եբր. Ժ. 22 ։

Յամի Տեառն
33

ժ դուք մաքուր էք , բայց չէ՛ թէ
11 ամէնքդ ։ Ըվասն զի դիտէր զա-
նիկայ որ զինքը պիտի մատնէր ․
անոր համար ըսաւ՝ Չէ թէ ամէնքդ
12 ալ մաքուր էք ։ Ու երբոր անոնց
ոտքերը լուաց , և իր հանդերձները
առնելով՝ նորէն սեղան նստաւ , ը-
սաւ անոնց ․ Գիտէ՞ք ինչ ըրի ձե-
13 զի ։ ԼԴուք զիս Վարդապետ ու
Տէր կը կոչէք , և աղէկ կ'ըսէք ․
14 ինչու որ այնպէս եմ ։ Ի Հապա թէ
որ ես Տէրս ու վարդապետս ձեր
ոտքերը լուացի , Ծպէտք է որ դուք
15 ալ իրարու ոտքերը լուաք ։ Վասն
զի Ժձեզի մէկ օրինակ մը տուի , որ
ինչպէս ես ձեզի ըրի՝ դուք ալ ընէք ։
16 Կճշմարիտ ճշմարիտ կ'ըսեմ ձեզի ․
ծառան իր տիրոջմէն մեծ չէ , ոչ
ալ խրկուածը զինքը խրկողէն մեծ
17 է ։ ՅԵթէ դուք աս բաները գի-
տէք , երանելի էք՝ թէ որ ասոնք
18 կատարէք ։ Չէ թէ ձեր ամենուն
համար կ'ըսեմ , Հսան չէ ես կը
ճանչնամ անոնք որ ես ընտրեցի ,
Ղհապա որ ան գրուածը կատարուի
թէ՝ ՃԱն որ իմ հետս հաց կ'ուտէր ,
19 ինծի դէմ կրունկ վերցուց ։ ՄՀի-
մակուընէ կ'ըսեմ ձեզի՝ քանի որ
չէ եղեր , որ երբոր ըլլայ՝ հաւատաք
20 թէ ես ան եմ ։ Յճշմարիտ ճշմա-
րիտ կ'ըսեմ ձեզի ․ Ով որ կ'ըն-
դունի անիկայ որ ես կը խրկեմ ,
զիս կ'ընդունի ․ և ով որ զիս կ'ըն-
դունի , զիս խրկողը կ'ընդունի ։
21 ՇՅիսուս երբոր աս ըսաւ , Ոէր հո-
գիին մէջ խռովեցաւ , և վկայեց ը-
սելով ․ Չճշմարիտ ճշմարիտ կ'ը-
սեմ ձեզի , Պոր ձեզմէ մէկը զիս պի-
22 տի մատնէ ։ Ուստի աշակերտները
տարակուսած իրարու կը նայէին ,
23 թէ որու համար կը զրուցէ ։ ՌՈւ
աշակերտներէն մէկը կար Յիսուսին
*քովը նստած , որն որ Յիսուս կը
24 սիրէր ։ Եւ Սիմոն Պետրոս անոր
աչք կ'ընէր հարցնելու՝ թէ ով
պիտի ըլլայ անիկայ՝ որուն համար
25 կը զրուցէ ։ Ան ալ Յիսուսին
կուրծքին վրայ իյնալով՝ ըսաւ ա-
26 նոր ․ Տէր՝ ո՞վ է ան ։ Յիսուս
պատասխան տուաւ ․ Անիկայ է՝
որուն որ պատառը կը թրջեմ ու
կու տամ ․ և թրջելով պատառը
Իսկարիովտացի Սիմոնեան Յուդա-
27 յին տուաւ ։ ՍՈւ պատառէն ետքը
Սատանան անոր ներսը մտաւ ։
Եւ Յիսուս ըսաւ անոր ․ Ինչ որ
28 պիտի ընես , շուտով ըրէ ։ Բայց
աս բանը սեղան նստողներէն մէկը
չհասկըցաւ , թէ ինչու համար ը-
29 սաւ անոր ։ Վասն զի ոմանք կը
խորհէին թէ՝ Տորովհետև դանձա-
նակը Յուդան կը պահէր , Յի-
սուս անոր կ'ըսէր ․ Ծախու առ

ժ Գլ․ ժե․ 3։ Ի Գլ․ գ․ 65։ Լ Մատ․ իգ․ 8․ 10։ Ղու․ զ․ 46։ Ա Կոր․ ը․ 6։ ժր․ 3։ Փիլ․ բ․ 11։ Ի Ղու․ իբ․ 27։ Ծ Հռով․ ժբ․ 10։ Գաղ․ զ․ 1, 2։ Ա Պետ․ ե․ 5։ Ժ Մատ․ ժա․ 29։ Փիլ․ բ․ 5։ Ա Պետ․ բ․ 21։ Ա Յով․ բ․ 6։ Կ Մատ․ ժ․ 24։ Ղու․ զ․ 40։ Գլ․ ժե․ 20։ Յ Յակ․ ա․ 25։ Հ Սաղ․ խա․ 9։ Մատ․ իզ․ 23։ Հմր 21։ Մ Գլ․ ժգ․ 29։ ժզ․ 4։ Յ Մատ․ ժ․ 40։ իե․ 40։ Ղու․ ժ․ 16։ Շ Մատ․ իզ․ 21։ Մար․ ժդ․ 18։ Ղու․ իբ․ 21։ Ո Գլ․ ժբ․ 27։ Չ Գործ․ ա․ 17։ Ա Յով․ բ․ 19։ Ռ Գլ․ ժթ․ 26։ ի․ 2։ իա․ 7, 20, 24։ * Յուն․ գոգը Ս Ղու․ իբ․ 3։ Գլ․ զ․ 71։ Տ Գլ․ ժբ․ 6։

ինչ որ մեզի աս տօնիս պէտք է ,
կամ թէ՝ որ աղքատներուն բան մը
30 տայ ։ Անիկայ ալ պատառը ա-
ռածին պէս՝ շուտ մը դուրս ելաւ ,
ու գիշեր էր ։
31 Ու երբոր անիկայ դուրս ելաւ ,
Յիսուս ըսաւ ․ ՎՀիմա փառաւո-
րուեցաւ Որդին մարդոյ , Տու Աս-
տուած փառաւորուեցաւ անով ․
32 Րթէ որ Աստուած անով փառա-
ւորուեցաւ , Աստուած ալ անիկայ
իր անձովը պիտի փառաւորէ , Ցև
շուտով պիտի փառաւորէ անիկայ ։
33 Որդեակք՝ քիչ մը ատեն ալ ձեզի
հետ եմ ․ զիս պիտի փնտռէք ․
Ւև ինչպէս որ Հրէաներուն ըսի՝
թէ Ուր որ ես կ'երթամ , դուք
չէք կրնար գալ , հիմա ձեզի ալ
34 կ'ըսեմ ։ ՓՆոր պատուիրան մը
կու տամ ձեզի՝ որ մէկզմէկ սիրէք ,
ինչպէս որ ես ձեզ սիրեցի , որ դուք
35 ալ մէկզմէկ սիրէք ։ ՔԱսով ա-
մէնը պիտի գիտնան՝ թէ իմ աշա-
կերտներս էք , թէ որ իրարու վրայ
36 սէր ունենաք ։ Սիմոն Պետրոս
ըսաւ անոր ․ Տէր՝ ո՞ւր կ'երթաս ․
Յիսուս պատասխան տուաւ անոր ․
Ուր որ ես կ'երթամ , դուն հիմա
չես կրնար իմ ետևէս գալ , Օբայց
ետքը պիտի գաս իմ ետևէս ։
37 Պետրոս ըսաւ անոր ․ Տէր՝ ինչո՞ւ
հիմա չեմ կրնար քու ետևէդ գալ ․
Ֆես իմ կեանքս ալ քեզի համար
38 պիտի դնեմ ։ Յիսուս պատասխան
տուաւ անոր ․ Քու կեանքդ պիտի
դնես ինծի համար ․ Ճշմարիտ ճըշ-
մարիտ կ'ըսեմ քեզի , հաւը պիտի
չխօսի՝ մինչև որ դուն իրեք անգամ
զիս ուրանաս ։

## ԳԼ․ ԺԴ

1 Քրիստոս կը մխիթարէ իր աշակերտները՝ երկնային երջանկութեան յոյսը անոնց առջևը դնելով ․ 6 կը ծանուցանէ թէ ինքն է ճանապարհը՝ ճշմարտութիւնը և կեանքը , և թէ ինքը Հօրը հետ մէկ է ․ 13 կը խոստանայ որ իր անունովը եղած աղօթքը պիտի կատարուի ․ 15 կը պատուիրէ սէր և հնազանդութիւն ունենալ իրեն ․ 16 կը խոստանայ խրկել Մխիթարիչ Սուրբ Հոգին ․ 27 ու իր խաղաղութիւնը կու տայ անոնց ։

1 ԱՍիրտերնիդ չխռովի ․ Աստուծոյ
հաւատացէք , ինծի ալ հա-
2 ւատացէք ։ Իմ Հօրս տունը շատ
բնակարաններ կան ․ ապա թէ ոչ՝
ես ձեզի պիտի ըսէի ․ ԲՀիմա կ'եր-
թամ ու ձեզի տեղ կը պատրաս-
3 տեմ ։ Եւ թէ որ երթամ ու
ձեզի տեղ պատրաստեմ , ԳՆորէն
կու գամ՝ և ձեզ քովս կ'առնեմ ․
ԴՈրպէս զի ուր որ ես եմ՝ դուք
4 ալ հոն ըլլաք ։ Եւ ուր որ ես կ'եր-
թամ՝ գիտէք , ու ճամբան ալ
գիտէք ․
5 Թովմաս ըսաւ անոր ․ Տէր՝ չենք

Վ Գլ․ ժբ․ 23։ Տ Գլ․ ժգ․ 13։ Ա Պետ․ դ․ 11։ Ր Գլ․ ժէ․ 1, 4, 5, 6։ Ց Գլ․ ժբ․ 23։ Ւ Գլ․ է․ 34։ ը․ 21։ Փ Ղև․ ժթ․ 18։ Գլ․ ժե․ 12, 17։ Եփե․ ե․ 2։ Ա Թես․ դ․ 9։ Յակ․ բ․ 8։ Ա Պետ․ ա․ 22։ Ա Յով․ բ․ 7, 8։ գ․ 11, 23։ դ․ 21։ Ք Ա Յով․ բ․ 5։ դ․ 20։ Օ Գլ․ իա․ 18։ Բ Պետ․ ա․ 14։ Ֆ Մատ․ իզ․ 33, 34, 35։ Մար․ ժդ․ 29, 30, 31։ Ղու․ իբ․ 33, 34։

Ա Հմր 27։ Գլ․ ժզ․ 3, 22։ Բ Գլ․ ժգ․ 33, 36։ Գ Հմր 18, 28։ Գործ․ ա․ 11։ Դ Գլ․ ժբ․ 26։ ժէ․ 24։ Ա Թես․ դ․ 16։

Յամի Տեառն 33

ե Եբր. Թ. 8։ Գլ. Ա. 17։ Ը. 32։
ե Գլ. Ա. 4։ Ժա. 25։
ը Գլ. Ժ. 9։
թ Գլ. Ը. 19։
ժ Գլ. Ժբ. 45։ Կող. Ա. 15։ Եբր. Ա. 3։
ի Հմր 20։ Գլ. Ժ. 38։ ԺԷ. 21-23։
լ Գլ. Ե. 19։ Է. 16։ Ը. 28։ Ժբ. 49։
խ Գլ. Ե. 36։ Ժ. 38։
ծ Մատ. Իա. 21։ Մար. Ժզ. 17։ Ղուկ. Ժ. 17։
կ Մատ. Է. 7։ Իա. 22։ Մար. Ժա. 24։ Ղուկ. Ժա. 9։ Գլ. ԺԵ. 7, 16։ Ժզ. 23, 24։ Յակ. Ա. 5։ Ա Յովհ. Գ. 22։ Ե. 14։
հ Հմր 21, 23։ Գլ. ԺԵ. 10, 14։ Ա Յովհ. Ե. 3։
ձ Գլ. ԺԵ. 26։ Ժզ. 7։ Հռով. Ը. 15, 26։
ղ Գլ. ԺԵ. 26։ Ժզ. 13։ Ա Յովհ. Գ. 6։
ճ Ա Կոր. Բ. 14։
մ Ա Յովհ. Բ. 27։
յ Մատ. Իը. 20։
ն Հմր 3, 28։
շ Գլ. Ժզ. 16։
ո Ա Կոր. ԺԵ. 20։
չ Հմր 10։ Գլ. Ժ. 38։ ԺԷ. 21, 23, 26։
պ Հմր 15, 23։ Ա Յովհ. Բ. 5։ Ե. 3։

գիտեր ուր կ'երթաս , և ի՞նչպէս
6 կրնանք ճամբան գիտնալ ։ Յի-
սուս ըսաւ անոր . Ես եմ ճամ-
բան ու ճշմարտութիւնը ու
կեանքը . մէկը Հօրը քով չգար .
7 եթէ ոչ ինծմով ։ Եթէ որ զիս
ճանչնայիք՝ իմ Հայրս ալ կը ճանչ-
նայիք , և ասկէ ետև կը ճանչնաք
անիկայ՝ ու տեսաք անիկայ ։
8 Փիլիպպոս ըսաւ անոր . Տէ՛ր՝
Հայրը մեզի ցուցուր , ու հերիք է
9 մեզի ։ Ըսաւ անոր Յիսուս . Այս-
քան ժամանակ ձեզի հետ եմ , և
զիս չճանչցա՞ր Փիլիպպոս . ան որ
զիս տեսաւ՝ Հայրը տեսաւ , և դուն
ինտո՞ր կ'ըսես՝ թէ Հայրը մեզի
10 ցուցուր ։ Չե՞ս հաւատար , թէ
ես Հօրը մէջն եմ , ու Հայրը իմ
մէջս է . ան խօսքերը որ ես ձեզի
կը խօսիմ , ինչ թէ ինքիրմէս կը
խօսիմ . հապա Հայրը որ իմ մէջս
բնակած է , անիկայ կը գործէ ան
11 գործերը ։ Հաւատացէք ինծի ,
թէ ես Հօրը մէջն եմ ու Հայրը
12 իմ մէջս է . Ապա թէ ոչ՝ գոնէ
գործերուն համար ինծի հաւա-
տացէք ։ Ճշմարիտ ճշմարիտ
կ'ըսեմ ձեզի թէ , Ան որ ինծի կը
հաւատայ , ան գործերը որ ես կը
գործեմ , ինքն ալ պիտի գործէ ,
և անոնցմէ աւելի մեծ գործեր պի-
տի գործէ . ինչու որ ես Հօրս քո-
13 վը կ'երթամ ։ Եւ իմ անունովս
ինչ որ խնդրէք , պիտի կատարեմ
անիկայ , որ Հայրը Որդիովը փա-
14 ռաւորուի . Թէ որ իմ անունովս
բան մը խնդրէք , անիկայ պիտի
15 կատարեմ ։ Թէ որ զիս կը սի-
րէք , իմ պատուիրանքներս պա-
16 հեցէք ։ Ես ալ Հօրը պիտի ա-
ղաչեմ , և ուրիշ Մխիթարիչ մը
պիտի տայ ձեզի , որ յաւիտեան
17 ձեզի հետ բնակի . Ճշմարտու-
թեան Հոգին , որ աս աշխարհս
անիկայ չկրնար ընդունիլ . ինչու
որ չտեսներ անիկայ , ու չճանչնար
անիկայ . բայց դուք կը ճանչնաք
անիկայ , ինչու որ ձեր քովը կը
բնակի , և ձեր հետը պիտի ըլլայ ։
18 Ձեզ որբ չեմ թողուր , կու գամ
19 ձեզի ։ Քիչ մը ատենէն ետև՝ ալ
աշխարհս զիս չտեսներ , բայց
դուք պիտի տեսնէք զիս , ինչու
որ ես կենդանի եմ , և դուք կեն-
20 դանի պիտի ըլլաք ։ Ան օրը պի-
տի գիտնաք թէ ես իմ Հօրս մէջն
եմ , և դուք իմ մէջս , ես ալ ձեր
21 մէջը ։ Ան որ իմ պատուէրներս
կը բռնէ՝ ու կը պահէ անոնք , ա-
նիկայ է զիս սիրողը . և ան որ զիս
կը սիրէ՝ իմ Հօրմէս պիտի սի-
րուի . ու ես անիկայ պիտի սիրեմ ,
և ինքզինքս անոր պիտի յայտնեմ ։

22 Ըսաւ անոր Յուդա , (ոչ Իս-
կարիովտացին .) Տէ՛ր ինչպէս
կ'ըլլայ որ դուն ինքզինքդ մեզի
պիտի յայտնես , և չէ թէ աշխար-
23 հին ։ Յիսուս պատասխան տուաւ
ու ըսաւ անոր . Թէ որ մէկը զիս
կը սիրէ՝ իմ խօսքս պիտի պահէ .
ու իմ Հայրս անիկայ պիտի սիրէ .
և անոր պիտի գանք , ու անոր
24 քովը օթևան պիտի ընենք ։ Ան
որ զիս չսիրեր , իմ խօսքերս չպա-
հեր . և ան խօսքը որ կը լսէք՝ իմս
չէ , հապա Հօրը՝ որ զիս խրկեց ։
25 Աս բաները ձեզի խօսեցայ՝ բանի
26 որ ձեր քովն եմ ։ Բայց Մխի-
թարիչը՝ Սուրբ Հոգին՝ որ Հայրը
իմ անունովս պիտի խրկէ , անի-
կայ ձեզի բոլորը պիտի սորվեցընէ ,
և ինչ որ ձեզի ըսի՝ միտքերնիդ
27 պիտի բերէ ։ Խաղաղութիւն կը
թողում ձեզի . իմ խաղաղու-
թիւնս կու տամ ձեզի . չէ թէ
ինչպէս որ աշխարհս կու տայ՝ ես
ձեզի կու տամ . սիրտերնիդ չխ-
28 ռովի , ու չվախնայ ։ Լսեցիք որ
ես ըսի ձեզի թէ , Կ'երթամ ու
ձեզի կու գամ . Թէ որ զիս սի-
րէիք , պիտի ուրախանայիք , թէ
ես Հօրը քով կ'երթամ . ինչու
29 որ իմ Հայրս ինծմէ մեծ է ։ Եւ
հիմակուց դեռ չեղած ըսի ձեզի ,
30 որ երբոր ըլլայ՝ հաւատաք ։ Ալ
ձեր հետը շատ պիտի չխօսիմ .
ինչու որ աս աշխարհիս իշխանը
կու գայ , և իմ վրաս բան մը չու-
31 նի . Միայն թէ աշխարհս գիտնայ
որ ես Հայրը կը սիրեմ , ու ինչ-
պէս որ Հայրը ինծի պատուիրեց ,
անանկ կ'ընեմ . ելէք ասկէ եր-
թանք ։

## ԳԼ. ԺԵ

1 Քրիստոսի ու իր անդամներուն մէջ եղած մի-
աւորութիւնը և փոխադարձ սէրը՝ որթին
առակովը բացատրուած ։ 18 Քրիստոսի ա-
շակերտներուն մխիթարութիւնը՝ երբոր ա-
նոնք աշխարհէն ատելի կ'ըլլան և կը հալա-
ծուին ։ 26 Սուրբ Հոգիին և առաքեալնե-
րուն պաշտօնը ։

1 Ես եմ ճշմարիտ որթը , և իմ
2 Հայրս մշակն է ։ Ամէն ճիւղ
որ իմ վրաս է՝ ու պտուղ չբերեր ,
կը կտրէ զանիկայ . և ամէնը որ
պտուղ կը բերէ , կը մաքրէ զանի-
կայ , որ ալ աւելի պտուղ բերէ ։
3 Դուք հիմակուընէ մաքուր էք ան
4 խօսքով՝ որ ձեզի խօսեր եմ ։ Իմ
մէջս կեցէք՝ ու ես ձեր մէջը . ինչ-
պէս որ ճիւղը չկրնար ինքիրմէն
պտուղ բերել , թէ որ որթին վրայ
հաստատուած չըլլայ , նոյնպէս ալ
դուք չէք կրնար , թէ որ իմ վրաս
5 հաստատուած չըլլաք ։ Ես որթն
եմ՝ ու դուք ճիւղերն էք . ան որ
իմ վրաս հաստատուած է՝ և ես ա-

Յամի Տեառն 33

ջ Ղուկ. Զ. 16։
ռ Հմր 15։
ս Ա Յովհ. Բ. 24։ Յայտ. Գ. 20։
վ Հմր 10։ Գլ. Ե. 19, 38։ Է. 16։ Ը. 28։ Ժբ. 49։
տ Հմր 16։ Ղուկ. Իդ. 49։ Գլ. ԺԵ. 26։ Ժզ. 7։
ր Գլ. Բ. 22։ Ժբ. 16։ Ժզ. 13։ Ա Յովհ. Բ. 20, 27։
ց Փիլ. Դ. 7։ Կող. Գ. 15։
ւ Հմր 1։
փ Հմր 3, 18։
ք Հմր 12։ Գլ. Ժզ. 16։ Ի. 17։
օ Ոմանք՝ որ ըսի թէ։
Գլ. Ե. 18։ Ժ. 30։ Փիլ. Բ. 6։
Գլ. Ժզ. 19։ Ժգ. 4։
Գլ. Ժբ. 31։ Ժզ. 11։
Գլ. Ժ. 18։ Փիլ. Բ. 8։ Եբր. Ե. 8։
ա Մատ. ԺԵ. 13։
բ Գլ. Ժգ. 10։ ԺԷ. 17։ Եփ. Ե. 26։ Ա Պետ. Ա. 22։
գ Կող. Ա. 23։ Ա Յովհ. Բ. 6։

Յամի Տեառն 33

ա Յվ. . ժդ. 6 ։ Փիլ. ա. 11 ։ դ. 13 ։ Գոր. դ. 12 ։
բ Մատ. գ. 10 ։ Է. 19 ։
գ Հմր 16 ։ Գլ. ժդ. 13, 14 ։ ժզ. 23 ։
դ Մատ. ե 16 ։ Փիլ. ա 11 ։
ե Գլ. ը. 31 ։ ժգ. 35 ։
զ Գլ ժդ. 15 ։ 21 ։ 23 ։
է Գլ. ժզ. 24 ։ ժէ. 13 ։ ա Յոհ. ա. 4 ։
ը Գլ. ժգ. 34 ։ ա Թես. դ. 9 ։ ա Պետ. գ. 8 ։ ա Յոհ. դ. 11 ։ դ. 21 ։
թ Գլ. ժ 11, 15 ։ Հռովմ. ե. 7, 8 ։ Եփե. ե. 2 ։ ա Յոհ. գ. 16 ։
ժ Գլ. ժդ 15, 23 ։ Տես Մատ. ժբ. 50 ։
ժա Տես Ծն. ժը. 17 ։ Գլ. ժե. 26 ։ Գոր. ի. 27 ։
ժբ Գլ. զ. 71 ։ ժգ. 18 ։ ա Յոհ. դ. 10, 19 ։
ժգ Մատ. իը. 19 ։ Մար. ժզ. 15 ։ Կող. ա. 6 ։
ժդ Հմր 7 ։ Գլ. ժդ. 13 ։
ժե Հմր 12 ։
ժզ ա Յոհ. գ. 1, 13 ։
ժէ ա Յոհ. գ. 5 ։
ժը Գլ. ժէ. 14 ։
ժթ Մատ. ժ. 24 ։ Ղուկ. զ. 40 ։ Գլ. ժգ. 16 ։
ի Եզեկ. գ. 7 ։
իա Մատ. ժ. 22 ։ իդ. 9 ։ Գլ. ժզ. 3 ։
իբ Գլ. Թ. 41 ։
իգ Հռովմ. ա. 20 ։ Յակ. դ. 7 ։

Նոր վրայ, անիկայ շատ Գպտուղ կը
բերէ. ինչու որ առանց ինծի բան
6 մը չէք կրնար ընել ։ Թէ որ մէկը
իմ վրաս հաստատուած չէ, Եանի-
կայ ճիւղի մը պէս դուրս ձգուած ու
չորցած է. և կը ժողվեն զանոնք,
ու կրակը կը նետեն, ու կ'այրին ։
7 Թէ որ դուք իմ մէջս կենաք՝ և իմ
խօսքերս ալ ձեր մէջը կենան,
Զինչ որ ուզէք՝ պիտի խնդրէք, ու
8 պիտի ըլլայ ձեզի ։ ԷԱսով իմ
Հայրս փառաւորուեցաւ, որ դուք
շատ պտուղ բերէք, Հու իմ ա-
շակերտներս ըլլաք ։
9 Ինչպէս որ Հայրը զիս սիրեց, ես
ալ ձեզ սիրեցի. իմ սիրոյս մէջ
10 հաստատ կեցէք ։ Ըթէ որ իմ պա-
տուէրներս պահէք, իմ սիրոյս մէ-
ջը պիտի կենաք. ինչպէս որ ես իմ
Հօրս պատուէրները պահեցի, և
11 անոր սիրոյն մէջը կեցեր եմ ։ Աս
բաները ձեզի խօսեցայ, որ իմ
ուրախութիւնս ձեր մէջը մնայ,
Ժու ձեր ուրախութիւնը լման ըլ-
12 լայ ։ ԷԱս է իմ պատուէրս՝ որ մէկ-
զմէկ սիրէք, ինչպէս որ ես ձեզ
13 սիրեցի ։ ԼԱսկէ աւելի մեծ սէր մէկը
չկրնար ունենալ, որ մէկը իր կեան-
քը բարեկամներուն համար դնէ ։
14 ԽԴուք իմ բարեկամներս էք, թէ
որ ընելու ըլլաք ինչ որ ես ձեզի կը
15 պատուիրեմ ։ Ասկէ ետքը ձեզ
ծառայ չեմ անուաներ, ինչու որ
ծառան չգիտեր իր տէրը ինչ կ'ընէ.
հապա ես ձեզ բարեկամ անուա-
նեցի, Ծինչու որ ան ամէն բաները
որ իմ Հօրմէս լսեցի՝ ձեզի իմացու-
16 ցի ։ ԿՉէ թէ դուք զիս ընտրեցիք,
հապա ես ձեզ ընտրեցի, Հու դրի
ձեզ, որ դուք երթաք՝ և պտուղ
բերէք, ու ձեր պտուղը մնայ.
Յորպէս զի իմ անունովս ինչ որ
17 Հօրմէն խնդրէք, ձեզի տայ ։ ՆԱս
կը պատուիրեմ ձեզի որ մէկզմէկ
սիրէք ։
18 ՇԹէ որ աշխարհ ձեզ կ'ատէ,
գիտցէ՛ք որ ձեզմէ առաջ զիս ատեց ։
19 ՈԹէ որ աշխարհէս եղած ըլլայիք,
աշխարհ իրենները կը սիրէր. Չբայց
որովհետև աշխարհէ չէք՝ հապա ես
ձեզ աշխարհէն ընտրեցի, անոր հա-
20 մար աշխարհ ձեզ կ'ատէ ։ Միտ-
քերնիդ բերէք ան խօսքը որ ձեզի
ըսի թէ, Պծառան իր տիրոջմէն
մեծ չէ. թէ որ զիս հալածեցին,
ձեզ ալ պիտի հալածեն. Ջթէ որ
իմ խօսքս պահեցին, ձերն ալ պի-
21 տի պահեն ։ Ռբայց աս ամէն բա-
ները պիտի ընեն ձեզի իմ անուանս
համար, ինչու որ չճանչցան անիկայ
22 որ զիս խրկեց ։ Սթէ որ ես եկած և
անոնց խօսած չըլլայի, անոնք մեղք
չէին ունենար. Վբայց հիմա իրենց
մեղքին պատճառանք մը չունին ։
23 ՏԱն որ զիս կ'ատէ, իմ Հայրս ալ
24 կ'ատէ ։ Րթէ որ ան գործքերը ի-
րենց մէջը ըրած չըլլայի, որոնք ու-
րիշ մէկը չէ ըրած, անոնք մեղք
չէին ունենար. բայց հիմա տեսան,
ու ատեցին՝ զիս ալ իմ Հայրս ալ ։
25 Սակայն Ւեղաւ որ կատարուի ան
խօսքը՝ որ իրենց օրէնքը մէջ գը-
րուած է թէ, Փզուր տեղը զիս ա-
26 տեցին ։ Քբայց երբոր Մխիթարի-
չը գայ՝ որ ես Հօրմէն ձեզի պիտի
խրկեմ, ան Ճշմարտութեան Հո-
գին՝ որ Հօրմէն կ'ելլէ, Աանիկայ ին-
27 ծի համար պիտի վկայէ. ԲԵւ դուք
ալ կը վկայէք, Գինչու որ սկիզբէն
'ի վեր իմ հետս էք ։

ԳԼ. ԺԶ.

1 Քրիստոս կը յիշեցնէ իր աշակերտներուն՝ անոնց կրելու նեղութիւնները, և կը մխիթարէ զանոնք Սուրբ Հոգին խրկելու խոստմունքով, և իր յարութիւնը ու երկինքը համբառնալը նախաձայնելով. 23 կը հաստատէ թէ իր Հայրը պիտի լսէ անոնց աղօթքը՝ որ իր անունովը կ'ընեն. 33 և թէ իրմով խաղաղութիւն պիտի ունենան, թէ և աշխարհի մէջ նեղութիւն պիտի կրեն ։

1 Աս բաները ձեզի խօսեցայ որ
2 չգայթակղիք ։ Իրենց Եժողո-
վարաններէն դուրս պիտի ձգեն
ձեզ. ու ժամանակ ալ պիտի գայ
Զոր ամէն ով որ ձեզ սպաննէ, ա-
նանկ պիտի սեպէ թէ Աստուծոյ
3 պաշտօն կը մատուցանէ ։ ԴԵւ աս
բաները Յեզի պիտի ընեն՝ անոր հա-
մար որ ոչ Հայրը ճանչցան ոչ ալ
4 զիս ։ ԵԲայց աս բաները ձեզի խօսե-
ցայ, որ երբ ժամանակը գայ՝ միտ-
քերնիդ բերէք թէ ես ըսի ձեզի. և
Ղաս բաները սկիզբէն չըսի ձեզի,
ինչու որ ես հետերնիդ էի ։
5 ԵՍակայն հիմա ես կ'երթամ զիս
խրկողին քովը, և ձեզմէ մէկն ալ
չհարցըներ ինծի թէ Ո՞ւր կ'եր-
6 թաս ։ Բայց որովհետև աս բանե-
րը ձեզի խօսեցայ, Ըձեր սիրտերը
7 տրտմութիւնով լեցաւ ։ Բայց ես
ճշմարիտը կ'ըսեմ ձեզի. աղէկ է
ձեզի թէ որ ես երթամ. քանզի
թէ որ ես չերթամ, ԲՄխիթարիչը
ձեզի չգար. Ժհապա թէ որ երթամ,
8 անիկայ ձեզի կը խրկեմ ։ Եւ ին-
քը երբոր գայ՝ աշխարհը պիտի
յանդիմանէ մեղքի համար, և ար-
դարութեան համար, ու դատաս-
9 տանի համար ։ ԷՄեղքի համար՝ որ
10 ինծի չեն հաւատար. ԼԱրդարու-
թեան համար՝ Խոր ես իմ Հօրս
քով կ'երթամ, և ալ զիս չէք տես-
11 ներ. Եւ Ծդատաստանի համար՝
Կոր աս աշխարհիս իշխանը դատա-
12 պարտուած է ։ Ձեզի տակաւին
շատ բաներ ունիմ ըսելու, Հբայց
13 հիմա չէք կրնար տանիլ ։ Իսկ

Յամի Տեառն 33

Հ ա Յոհ. բ. 23 ։
Ա Գլ. գ. 2 ։ է. 31 ։ Թ. 32 ։
Ւ Սաղ. լե. 19 ։ կԹ. 4 ։
Փ Ղուկ. իդ. 49 ։ Գլ. ժդ. 17, 26 ։ ժզ. 7, 13 ։ Գործ. բ. 33 ։
Ք ա Յոհ. ե. 6 ։
Բ Ղուկ. իդ. 48 ։ Գործ. ա. 8 ։ 21 ։ 22 ։ բ. 32 ։ գ. 15 ։ դ. 20 ։ 33 ։ ե. 32 ։ ժ. 39 ։ ժգ. 31 ։ ա Պետ. ե. 1 ։ բ Պետ. ա. 16 ։
Գ Ղուկ. ա. 2 ։ ա Յոհ. ա. 1, 2 ։

Դ Մատ. ժա. 6 ։ իդ. 10 ։ իզ. 31 ։
Ե Գլ. Թ. 22, 34 ։ ժբ. 42 ։
Զ Գործ. է. 59 ։ Թ. 1 ։ իզ. 9, 10, 11 ։
Է Գլ. ժե. 21 ։ Հռովմ. ժ. 2 ։ ա Կոր. ը. 8 ։ ա Տիմ. ա. 13 ։
Ը Գլ. ժգ. 19 ։ ժդ. 29 ։
Թ Տես Մատ. Թ. 15 ։
Ժ Հմր 10, 16 ։ Գլ. է. 33 ։ ժգ. 3 ։ ժդ. 28 ։
Ի Հմր 22 ։ Գլ. ժդ. 1 ։
Լ Գլ. է. 39 ։ ժդ. 16 ։ 26 ։ ժե. 26 ։
Խ Գործ. բ. 33 ։ Եփե. դ. 8 ։
Ծ Գործ. ը. 22—27 ։
Կ Գործ. բ. 22 ։
Հ Գլ. գ. 14 ։ ե. 32 ։
Ձ Գործ. իզ. 18 ։
Ղ Ղուկ. ժ. 18 ։ Գլ. ժբ. 31 ։ Եփե. բ. 2 ։ Կող. բ. 15 ։ Եբր. բ. 14 ։
Ճ Մար. դ. 33 ։ ա Կոր. գ. 2 ։ Եբր. ե. 12 ։

Յամփ Տեառն 33

երբոր ինքը՝ Ճշմարտութեան Հո-
գին գայ, ամէն ճշմարտութեան
պիտի առաջնորդէ ձեզի. ինչու որ
չէ թէ ինքիրմէն պիտի խօսի, հա-
պա ինչ որ լսէ՝ ան պիտի խօսի,
ու գալիքները ձեզի պիտի պատմէ։
14 Անիկայ զիս պիտի փառաւորէ,
ինչու որ իմինէս պիտի առնէ ու
15 ձեզի պատմէ։ Ան ամէն բաները
որ Հայրը ունի, իմս է. անոր
համար ձեզի ըսի թէ իմինէս պիտի
16 առնէ, ու ձեզի պատմէ։ Քիչ
մը ատենէն՝ ալ զիս պիտի չտեսնէք,
և դարձեալ քիչ մը ատենէն զիս
պիտի տեսնէք, քանզի ես Հօրը
կ'երթամ։
17 Ասոր համար աշակերտներէն ո-
մանք իրարու կ'ըսէին. Ի՞նչ է աս
որ մեզի կ'ըսէ թէ Քիչ մը ատենէն՝
ալ զիս պիտի չտեսնէք. և դար-
ձեալ քիչ մը ատենէն զիս պիտի
տեսնէք. և Քանզի ես Հօրը կ'եր-
18 թամ։ Ու կ'ըսէին. Ի՞նչ պիտի
ըլլայ ան Քիչ մըն ալը՝ որ կ'ըսէ.
չենք գիտեր ինչ կը զրուցէ։
19 Իսկ Յիսուս գիտնալով որ կ'ուզեն
իրեն հարցընել, ըսաւ անոնց.
Ասո՞ր համար իրարու կը հար-
ցընէք, որ ըսի թէ Քիչ մը ատենէն՝
ալ զիս պիտի չտեսնէք. և դար-
ձեալ քիչ մը ատենէն զիս պիտի
20 տեսնէք։ Ճշմարիտ ճշմարիտ
կ'ըսեմ ձեզի, դուք պիտի լաք
ու ողբաք, բայց աշխարհս պիտի
ուրախանայ. դուք պիտի տրտմիք.
սակայն ձեր տրտմութիւնը ուրա-
21 խութեան պիտի փոխուի։ Կնիկ
մը երբոր ծնանելու վրայ է՝ տրտ-
մութիւն կ'ունենայ, ինչու որ իր
ժամը հասած է. բայց երբոր տղան
ծնանի, ալ նեղութիւնը միտք չը-
բերեր ուրախութենէն՝ որ աշխարհ
22 մարդ մը ծնաւ։ Նոյնպէս դուք
հիմա տրտմութիւն ունիք. բայց ես
ձեզ նորէն պիտի տեսնեմ, և ձեր
սիրտերը ուրախ պիտի ըլլան. ու
ձեր ուրախութիւնը մէկը ձեզմէ
23 պիտի չհանէ։ Եւ ան օրը ինծի
բան մը պիտի չհարցընէք։ Ճշմա-
մարիտ ճշմարիտ կ'ըսեմ ձեզի, որ
իմ անունովս ինչ որ խնդրէք Հօր-
24 մէն, պիտի տայ ձեզի։ Մինչև
հիմա իմ անունովս բան մը չը-
խնդրեցիք. խնդրեցէք՝ ու պիտի
առնէք, որ ձեր ուրախութիւնը
25 լման ըլլայ։ Աս բաները առակ-
ներով խօսեցայ ձեզի. բայց ժա-
մանակ պիտի գայ, որ ալ ձեզի
առակներով պիտի չխօսիմ. հա-
պա յայտնապէս Հօրը վրայով պի-
26 տի պատմեմ ձեզի։ Ան օրը իմ
անունովս պիտի խնդրէք. և չեմ
ըսեր ձեզի՝ թէ ես ձեզի համար պի-
27 տի աղաչեմ Հօրը. Ինչու որ ին-
քը Հայրը ձեզ կը սիրէ, վասն զի
դուք զիս սիրեցիք՝ և հաւատացիք
28 թէ ես Աստուծմէ ելայ։ Հօրմէն
ելայ՝ ու աշխարհ եկայ. նորէն կը
թողում աշխարհը՝ և Հօրը կ'եր-
թամ։
29 Ըսին անոր՝ իր աշակերտները.
Ահա հիմա յայտնապէս կը խօսիս,
30 և առակ մըն ալ չես ըսեր։ Հի-
մա իմացանք որ ամէն բանը գի-
տես, և պէտք չէ որ մէկը
քեզի հարցընէ. ասով կը հաւա-
31 տանք որ Աստուծմէ ելար։ Յիսուս
պատասխան տուաւ անոնց՝
32 Հիմա կը հաւատա՞ք. Ահա
ժամանակ պիտի գայ, ու եկած ալ
է, որ ցիրուցան պիտի ըլլաք՝ ամէն
մէկը իր տեղը, ու զիս մինակ պիտի
թողուք. բայց ես մինակ չեմ, ին-
33 չու որ Հայրը իմ հետս է։ Աս
բաները ձեզի խօսեցայ, որ ինծմով
խաղաղութիւն ունենաք. աշ-
խարհի մէջ նեղութիւն պիտի ու-
նենաք. բայց քաջասիրտ եղէք.
ես աշխարհին յաղթեցի։

## ԳԼ. ԺԷ

1 Քրիստոս կ'աղաչէ իր Հօրը որ փառաւորէ
զինքը, 6 որ հաստատ պահէ իր առաքեալները
11 միութեան մէջ՝ 17 և ճշմարտութեան մէջ,
20 որ երկնից մէջ իր հետը փառաւորէ զանոնք
և ամէն ուրիշ հաւատացեալները։

1 Յիսուս երբոր ասոնք խօսեցաւ,
իր աչքերը դէպ 'ի երկինքը վեր-
ցուց՝ ու ըսաւ. Հա՛յր՝ ժամանակը
հասեր է, փառաւորէ քու Որդիդ,
որ քու Որդիդ ալ քեզ փառաւո-
2 րէ. Ինչպէս որ իրեն իշխանու-
թիւն տուիր ամէն մարմնոյ վրայ,
որ յաւիտենական կեանք տայ ան
3 ամենուն՝ որ իրեն տուիր։ Եւ
աս է յաւիտենական կեանքը, որ
ճանչնան քեզ մի միայն ճշմարիտ
Աստուածդ, ու Յիսուս Քրիստո-
4 սը՝ որն որ դուն ղրկեցիր։ Ես
քեզ երկրիս վրայ փառաւորեցի.
ան գործը որ ինծի տուիր ընե-
5 լու՝ լմնցուցի։ Եւ հիմա դու Հայր՝
փառաւորէ զիս քու քովդ ան
փառքովը՝ որ աշխարհի ըլլալէն
6 առաջ քովդ ունէի։ Քու անունդ
յայտնի ըրի ան մարդոցը՝ որոնք
որ աշխարհէն ինծի տուիր. քուկդ
էին, ու ինծի տուիր անոնք. և
7 քու խօսքդ պահեցին։ Հիմա
գիտցան՝ թէ ան ամէն բաները որ
8 ինծի տուիր, քեզմէ են. Ինչու որ
ան խօսքերը որ ինծի տուիր, ես
անոնց տուի, անոնք ալ ընդունե-
ցին, և ճշմարտութեամբ իմա-

Յամփ Տեառն 33

Գլ. ժդ. 17. ժե. 26. Գլ. ժդ. 26. ա Յով. բ. 20. 27.
Մատ. ժա. 27. Գլ. գ. 35. ժզ. 3. ժէ. 10.
Հմր 10. Գլ. է. 33. ժգ. 33. ժդ. 19.
Հմր 28. Գլ. ժգ. 3.
Եսա. ժէ. 17.
Հմր 6.
Ղու. իդ. 41. 52. Գլ. ժդ. 1. 27. ի. 20. Գործ. բ. 46. ժգ. 52. ա Պետ. ա. 8.
Մատ. է. 7. Գլ. ժդ. 13. ժե. 16.
Գլ. ժե. 11.
Հմր 23.

Յամփ Տեառն 33

Գլ. ժդ. 21. 23. Հմր 30. Գլ. գ. 13. ժէ. 8. Գլ. ժգ. 3. Գլ. իա. 17.
Հմր 27. Գլ. ժէ. 8. Մատ. իզ. 31. Մար. ժդ. 27.
Գլ. ի. 10. Գլ. ը. 29. ժդ. 10. 11. Եսա. թ. 6. Գլ. ժդ. 27. Հռով. ե. 1. Եփե. բ. 14. Կող. ա. 20.
Գլ. ժե. 19. 20. 21. բ Տիմ. գ. 12. Գլ. ժդ. 1. Հռով. ը. 37. ա Յով. դ. 4. ե. 4.

Գլ. ժբ. 23. ժգ. 32. Դան. է. 14. Մատ. ժա. 27. իը. 18. Գլ. գ. 35. ե. 27. ա Կոր. ժե. 25. 27. Փիլ. բ. 10. Եբր. բ. 8.
Հմր 6. 9. 24. Գլ. գ. 37.
Եսա. ծգ. 11. Երեմ. թ. 24.
ա Կոր. ը. 4. ա Թես. ա. 9.
Գլ. գ. 34. ե. 36. 37. զ. 29. 58. է. 29. ժ. 36. ժա. 42.
Գլ. ժգ. 31. ժդ. 13.
Գլ. դ. 34. ե. 36. թ. 3. ժթ. 30.
Գլ. ժգ. 31. ժե. 10.
Գլ. ա. 1. 2. ժ. 30. ժդ. 9. Փիլ. բ. 6. Կող. ա. 15. 17. Եբր. ա. 3. 10.
Հմր 26. Սաղ. իբ. 22.

Հմր 2. 9. 11. Գլ. զ. 37. 39. ժ. 29. ժե. 19. Գլ. ը. 28. ժբ. 49. ժդ. 10. Հմր 25. Գլ. ժզ. 27. 30.

Ցամի Տեառն 33

լ Յով. Ե. 19 ։
հ Գլ. ԺԶ. 15 ։
յ Գլ. ԺԴ. 1 ; ԺԶ. 28 ։
ն Ա Պետ. Ա. 5 ; Յուդ. 1 ։
շ Հմր 21. ԻԳ ։
ո Գլ. Ժ. 30 ։
չ Գլ. Զ. 39 ; Ժ. 28 ; Եբր. Բ. 13 ։
պ Գլ. ԺԸ. 9 ; Ա Յօհ. Բ. 19 ։
ջ Գլ. Զ. 71 ; ԺԳ. 18 ։
ռ Սաղ. ՃԹ. 8 ; Գոր. Ա. 20 ։
ս Հմր 8 ։
վ Գլ. ԺԵ. 18, 19 ; Ա Յօհ. Գ. 13 ։
տ Գլ. Ը. 23 ; Հմր 16 ։
ր Մատ. Զ. 13 ; Գաղ. Ա. 4 ; Բ Թես. Գ. 3 ; Ա Յօհ. Ե. 18 ։
ց Հմր 14 ։
ւ Գլ. ԺԵ. 3 ; Գոր. ԺԵ. 9 ; Եփե. Ե. 26 ; Ա Պետ. Ա. 22 ։
փ Բ Թագ. Է. 28 ; Սաղ. ՃԺԹ. 142, 151 ; Գլ. Ը. 40 ։
ք Գլ. Ի. 21 ։
օ Ա Կոր. Ա. 2 , 30 ; Ա Թես. Դ. 7 ; Եբր. Ժ. 10 ։
ֆ Հմր 11, 22, 23 ; Գլ. Ժ. 16 ; Հռով. ԺԲ. 5 ; Գաղ. Գ. 28 ։
ա Գլ. Ժ. 38 ; ԺԴ. 11 ։
բ Գլ. ԺԴ. 20 ; Ա Յօհ. Ա. 3 ; Գ. 24 ։
գ Կող. Գ. 14 ։
դ Գլ. ԺԲ. 26 ; ԺԴ. 3 ; Ա Թես. Դ. 16 ։
ե Հմր 5 ։

ցան՝ որ ես քեզմէ ելայ , ու հաւա-
տացին՝ թէ դուն խրկեցիր զիս ։
9 Ես անոնց համար կ'աղաչեմ . [լ]չէ
թէ աշխարհի համար կ'աղաչեմ ,
հապա անոնց համար՝ որոնք դուն
ինծի տուիր , ինչու որ քուկդ են
10 անոնք ։ Եւ ինչ որ իմս է , ան
բոլորը քուկդ է , [հ]և ինչ որ քու-
կըդ է , ան իմս է , ու ես անոնց-
11 մով փառաւորուած եմ ։ [յ]Եւ ես՝
ալ աշխարհի մէջ չեմ , բայց ա-
նոնք աշխարհի մէջ են , ու ես քե-
զի կու գամ . ով Սուրբ Հայր՝
[ն]քու անունովդ պահէ անոնք որ
դուն ինծի տուիր , [շ]որպէս զի մէկ
ըլլան , [ո]ինչպէս որ մենք մէկ ենք ։
12 Քանի որ աշխարհի մէջ անոնց հետ
էի , [չ]ես կը պահէի անոնք քու
անունովդ . որոնք որ դուն ինծի
տուիր , ես պահեցի , [պ]և անոնցմէ
մէկը չկորսուեցաւ , [ջ]միայն թէ ան
կորստեան որդին , [ռ]որ գրուածը
13 կատարուի ։ Ալ հիմա քեզի կու
գամ , ու աշխարհի մէջ աս բա-
ները կը խօսիմ , որ իմ ուրախու-
թիւնս իրենց անձերուն մէջ կա-
14 տարեալ ունենան ։ [ս]Ես քու
խօսքդ անոնց տուի , [վ]ու աշխարհս
անոնք ատեց . ինչու որ աշխարհէ
չեն , [տ]ինչպէս որ ես աշխարհէ չեմ ։
15 Չեմ աղաչեր՝ որ անոնք աշխարհէն
վերցընես . [ր]հապա որ անոնք չա-
16 րէն պահես ։ [ց]Անոնք աշխարհէ
չեն , ինչպէս որ ես աշխարհէ չեմ ։
17 [ւ]Սրբէ անոնք քու ճշմարտութիւ-
նովդ . [փ]քու խօսքդ ճշմարտու-
18 թիւն է ։ [ք]Ինչպէս որ դուն զիս
աշխարհք խրկեցիր , ես ալ անոնք
19 աշխարհք խրկեցի ։ [օ]Եւ անոնց
համար ես իմ անձս կը սրբեմ , որ
իրենք ալ ճշմարտութիւնով սըր-
20 բուած ըլլան ։ Բայց չէ թէ մինակ
անոնց համար կ'աղաչեմ , հապա
անոնց խօսքովը բոլոր ինծի հաւա-
21 տացողներուն համար ալ . [ֆ]Որ
ամէնն ալ մէկ ըլլան , ինչպէս որ
[ա]դուն ով Հայր՝ իմ մէջս , ու ես
քու մէջդ , որ անոնք ալ մեր մէջը
մէկ ըլլան . որպէս զի աշխարհս
հաւատայ՝ թէ դուն խրկեցիր զիս ։
22 Եւ ան փառքը որ դուն ինծի
տուիր՝ ես անոնց տուի , [բ]որ մէկ
ըլլան՝ ինչպէս որ մենք մէկ ենք .
23 (Ես անոնց մէջ՝ և դուն իմ մէջս , )
[գ]որ իրենք կատարեալ ըլլան միու-
թեան մէջ . ու աշխարհս գիտնայ
թէ դուն խրկեցիր զիս , ու սիրե-
ցիր անոնք՝ ինչպէս որ զիս սիրե-
24 ցիր ։ [դ]Ո՛վ Հայր՝ անոնք որ դուն
ինծի տուիր , կ'ուզեմ որ ուր որ
ես եմ , անոնք ալ իմ հետս ըլ-
լան , որպէս զի տեսնեն իմ փառ-
քըս՝ որն որ ինծի տուիր . [ե]ինչու
որ դուն զիս սիրեցիր աշխար-
25 հիս սկիզբէն առաջ ։ Ո՛վ արդար
Հայր՝ [զ]աշխարհս քեզ չճանչցաւ ,
[է]բայց ես քեզ ճանչցայ , [ը]և ա-
սոնք ճանչցան թէ դուն զիս խըր-
26 կեցիր ։ [թ]Եւ քու անունդ անոնց
ճանչցուցի , ու պիտի ճանչցընեմ ,
որ ան սէրը որով դուն զիս սի-
րեցիր , անոնց մէջը ըլլայ , ու ես
[ժ]ալ անոնց մէջը ։

## ԳԼ . ԺԸ

1 Յուդա կը մատնէ զՅիսուս ։ 6 Յիսուսի վրայ եկողները գետինը կը զարնուին ։ 10 Պետրոս սուրով կը կտրէ Մաղքոսին ականջը ։ 12 Յիսուս կը բռնուի ու կը տարուի Աննայի և Կայիափայի՝ առջևը ։ 15 Պետրոսին ուրացութիւնը ։ 19 Յիսուս կը քննուի Կայիափային առջևը . 28 կ'ամբաստանուի Պիղատոսին առջևը ։ 36 Քրիստոսի թագաւորութիւնը ։ 40 Հրեայք կ'ուզեն որ Բարաբբան արձակուի ։

1 Յիսուս աս բաները ըսելէն ետև՝
[ա]իր աշակերտներուն հետ մէկ-
տեղ [բ]Կեդրոն հեղեղատին միւս
կողմը ելաւ , ուր որ պարտէզ մը
կար , որուն մէջը մտաւ ինքը ու իր
2 աշակերտները ։ Եւ Յուդան ալ
որ զանիկայ պիտի մատնէր , գիտէր
ան տեղը . [գ]ինչու որ Յիսուս շատ
անգամ իր աշակերտներուն հետ
3 մէկտեղ հոն ժողվուած էր ։ [դ]Ուս-
տի Յուդան զինուորներուն գունդը՝
ու քահանայապետներէն և փարի-
սեցիներէն սպասաւորներ հետը առ-
նելով , ան տեղը եկաւ ջահերով
ու լապտերներով և զէնքերով ։
4 Իսկ Յիսուս իր վրայ գալու բոլոր
բաները գիտնալով՝ ելաւ ու ըսաւ
5 անոնց . Ո՞վ կը փնտռէք ։ Պա-
տասխան տուին անոր . Նազովրե-
ցի Յիսուսը . ըսաւ անոնց Յի-
սուս , Ես եմ . Յուդան ալ որ
զանիկայ կը մատնէր՝ անոնց հետ
6 կայներ էր ։ Ու երբոր ըսաւ՝ թէ
Ես եմ , ետ ետ գացին՝ ու գետինը
7 ինկան ։ Եւ նորէն հարցուց ա-
նոնց . Ո՞վ կը փնտռէք . անոնք
ալ ըսին , Նազովրեցի Յիսուսը ։
8 Յիսուս պատասխան տուաւ . Ձե-
զի ըսի թէ՝ Ես եմ . ուստի թէ որ
զիս կը փնտռէք , թող տուէք ա-
9 սոնք որ երթան ։ Որ կատարուի
ան խօսքը որ ինքը ըսեր էր թէ՝
[ե]Անոնք որ ինծի տուիր , անոնցմէ
10 մէկն ալ չկորսընցուցի ։ [զ]Ան ատե-
նը Սիմոն Պետրոս՝ որ սուր մը
ունէր , քաշեց անիկայ , ու քահա-
նայապետին ծառային զարնելով՝
անոր աջ ականջը կտրեց հանեց . և
ան ծառային անունը Մաղքոս էր ։
11 Իսկ Յիսուս ըսաւ Պետրոսին .
Սուրդ իր պատեանը դիր . ան [է]գա-
ւաթը որ Հայրը ինծի տուաւ ,
պիտի չխմե՞մ անիկայ ։

Ցամի Տեառն 33

զ Գլ. ԺԵ. 21 ; ԺԶ. 3 ։
է Գլ. Է. 29 ; Ը. 55 ; Ժ. 15 ։
ը Հմր 8 ; Գլ. ԺԶ. 27 ։
թ Հմր 6 ; Գլ. ԺԵ. 15 ։
ժ Գլ. ԺԵ. 9 ։
ա Մատ. ԻԶ. 36 ; Մար. ԺԴ. 32 ; Ղուկ. ԻԲ. 39 ։
բ Բ Թագ. ԺԵ. 23 ։
գ Ղուկ. ԻԱ. 37 ; ԻԲ. 39 ։
դ Մատ. ԻԶ. 47 ; Մար. ԺԴ. 48 ; Ղուկ. ԻԲ. 47 ; Գործ. Ա. 16 ։
ե Գլ. ԺԷ. 12 ։
զ Մատ. ԻԶ. 51 ; Մար. ԺԴ. 47 ; Ղուկ. ԻԲ. 49 , 50 ։
է Մատ. Ի. 22 ; ԻԶ. 39 , 42 ։

Յամ Տեառն 33

ըՂու. գ. 2։ ԲՏես Մատ. իզ. 57։ ԺԳլ. ժա. 50։
ԻՄատ. իզ. 58։ Մար. ժդ. 54։ Ղու. իբ. 54։
ԼՄատ. իզ. 69։ Մար. ժդ. 66։ Ղու. իբ. 54։
ԽՄատ. իզ. 55։ Ղու. դ. 15։ Գլ. է. 14. 26. 28։ ը. 2։
ԾԵրեմ. ի. 2։ Գործ. իգ. 2։
ԿՄատ. իզ. 57։
ՀՄատ. իզ. 69. 71։ Մար. ժդ. 69։ Ղու. իբ. 58։
ՅՄատ. իզ. 74։ Մար. ժդ. 72։ Ղու. իբ. 60։ Գլ. ժգ. 38։

12 Ուստի զինուորներուն գունդը ու
հազարապետը՝ և Հրէից սպասա-
ւորները բռնեցին Յիսուսը, ու
13 կապեցին. Եւ առաջ զանիկայ
ըԱննային տարին, քանզի ինքը
ան տարուան քահանայապետին
14 Կայիափային աներն էր։ ԺԵւ ան
Կայիափան էր, որ Հրէից խրատ
տուաւ թէ Աղէկ է որ մէկ մարդ
մը կորսուի ժողովուրդին համար։
15 Ու Յիսուսին ետեւէն կ'երթային
ԻՍիմոն Պետրոս և ուրիշ աշակերտ
մը. և ան աշակերտը քահանայա-
պետին ծանուցորը ըլլալով՝ Յիսու-
սին հետ քահանայապետին գաւիթը
16 մտաւ։ ԼԲայց Պետրոս դուրսը դը-
րանը քովը կը կենար. ուստի ե-
լաւ միւս աշակերտը՝ որ քահանա-
յապետին ծանուցորն էր, և ըսաւ
դռնապանին, ու ներս մտցուց
17 Պետրոսը։ Ան ատենը դռնապան
աղջիկը ըսաւ Պետրոսին. Միթէ
դո՞ւն ալ ան մարդուն աշակերտնե-
րէն ես. ան ալ ըսաւ, Չեմ։
18 Իսկ ծառաները ու սպասաւորները
հոն կայներ էին, և կրակ վառած
կը տաքնային, քանզի ցուրտ էր։
Պետրոս ալ անոնց հետ կայներ էր՝
19 ու կը տաքնար։ Եւ քահանայա-
պետը Յիսուսին հարցուց՝ անոր
աշակերտներուն ու վարդապետու-
20 թեանը վրայով։ Յիսուս պա-
տասխան տուաւ անոր. ԽԵս աշ-
խարհին յայտնի խօսեցայ. ես ա-
մէն ատեն ժողովարաններուն մէջ
ու տաճարին մէջ սորվեցուցի, ուր
որ բոլոր Հրէաները կը ժողվուին,
ու ծածկաբար բան մը չխօսեցայ։
21 Ինչու ինծի կը հարցընես, լսող-
ներուն հարցուր թէ ինչ խօսեցայ
իրենց. ահա ինչ որ խօսեցայ,
22 գիտեն իրենք։ Երբոր աս ըսաւ,
սպասաւորներէն մէկը՝ որ հոն կայ-
ներ էր, ԾՅիսուսին ապտակ մը
զարկաւ՝ ըսելով. Ատա՞նկ պա-
տասխան կու տաս քահանայապե-
23 տին։ Յիսուս անոր պատասխա-
նեց. Թէ որ չար խօսեցայ, վկայէ
չարին համար. հապա թէ որ բարի
խօսեցայ, ինչո՞ւ կը զարնես ինծի։
24 ԿԵւ Աննա անիկայ կապած Կայիա-
25 փա քահանայապետին խրկեց։ Սի-
մոն Պետրոսն ալ հոն կայներ էր՝ ու
կը տաքնար. և ՀԸսին իրեն. Մի-
թէ դո՞ւն ալ անոր աշակերտներէն
ես. անիկայ ուրացաւ ու ըսաւ թէ՝
26 Չեմ։ Քահանայապետին ծառա-
ներէն մէկն ալ՝ ան մարդուն ազգա-
կանը՝ որուն ականջը Պետրոս կըտ-
րեր էր, ըսաւ. Չէ՞ որ ես քեզ
տեսայ պարտէզին մէջը անոր հետ։
27 Ան ատենը Պետրոս նորէն ուրա-
ցաւ, ՅԵւ շուտ մը հաւը խօսեցաւ։

28 ՆՈւ Յիսուսը Կայիափայի քովէն
Կուսակալին պալատը տարին. և դեռ
առտու էր, ՕՈւ իրենք պալատը
չմտան՝ որ չպղծուին, հապա որ
29 զատիկը ուտեն։ Ուստի Պիղատոս
դուրս ելաւ անոնց՝ ու ըսաւ. Ի՞նչ
ամբաստանութիւն կը ներկայացը-
30 նէք աս մարդուն դէմ։ Պատաս-
խան տուին ու ըսին իրեն. Թէ որ
ատիկայ չարագործ մը չըլլար, քե-
31 զի չէինք մատներ զանիկայ։ Ան
ատենը Պիղատոս ըսաւ անոնց.
Դուք առէք անիկայ, ու ձեր օրէն-
քին համեմատ անոր դատաստանը
տեսէ՛ք։ Հրէաները իրեն ըսին.
Մեզի օրինաւոր չէ մարդ մը մեռ-
32 ցընել. ՓՈր կատարուի Յիսուսի
խօսքը, որ ըսաւ, իմացընելով թէ
ինչ մահով ինքը պիտի մեռնէր։
33 Իսկ ՔՊիղատոս նորէն պալատը մը-
տաւ, կանչեց Յիսուսը ու ըսաւ
անոր. Դո՞ւն ես Հրէից թագաւո-
34 րը։ Յիսուս պատասխան տուաւ
անոր. Ատիկայ դուն քեզմէ՞ կ'ը-
սես, թէ ինծի համար ուրիշները
35 քեզի ըսին։ Պատասխան տուաւ
Պիղատոս. Միթէ ե՞ս ալ Հրէայ
եմ. քու ազգդ և քահանայապետ-
ները քեզ ինծի մատնեցին. ի՞նչ
36 ըրած ես դուն։ ՆՅիսուս պատաս-
խան տուաւ. ՇԻմ թագաւորու-
թիւնս աս աշխարհէս չէ. թէ որ
աս աշխարհէս ըլլար իմ թագաւո-
րութիւնս, իմ սպասաւորներս կը
կռուէին՝ որ ես Հրէից ձեռքը չը-
մատնուիմ. բայց հիմա իմ թա-
37 գաւորութիւնս ասկէ չէ։ Ան ա-
տենը Պիղատոս ըսաւ անոր. Ու-
րեմն դուն թագաւո՞ր մըն ես. պա-
տասխան տուաւ Յիսուս. Դուն
կ'ըսես թէ թագաւոր եմ. ես աս
բանիս համար ծնած եմ, և ասոր
համար աշխարհք եկած, որ ճշմար-
տութեան համար վկայեմ. ան ա-
մէնը՝ ՈՈր ճշմարտութենէն է, իմ
38 ձայնիս ականջ կը դնէ։ Պիղատոս
ըսաւ անոր. Ի՞նչ է ճշմարտու-
թիւնը. և աս ըսելով՝ նորէն դուրս
ելաւ Հրէաներուն, և ըսաւ անոնց.
ՉԵս մէկ յանցանք մը չեմ գտներ
39 անոր վրայ։ ՊԲայց սովորութիւն
ունիք որ մէկ մարդ մը արձակեմ
ձեզի զատկիս. հիմա կ'ուզէ՞ք որ
Հրէից թագաւորը արձակեմ ձեզի։
40 ՋԱն ատենը ամէնքն ալ նորէն ա-
ղաղակեցին՝ ըսելով. Մի՛ արձակեր
ատիկայ, հապա Բարաբբան. ՌՈւ
Բարաբբան աւազակ մըն էր։

Յամ Տեառն 33

ՆՄատ. իէ. 2։ Մար. ժե. 1։ Ղու. իգ. 1։ Գործ. գ. 13։
ՕԳործ. ժ. 28։ ժա. 3։
ՓՄատ. ի. 19։ Գլ. ժբ. 32, 33։
ՔՄատ. իէ. 11։
ՆԱ Տիմ. զ. 13։
ՇԴան. բ. 44։ է. 14։ Ղու. ժբ. 14։ Գլ. գ. 15։ ը. 15։
ՈԳլ. ը. 47։ Ա Յով. դ. 19։ դ. 6։
ՉՄատ. իէ. 24։ Ղու. իգ. 4։ Գլ. ժթ. 4. 6։
ՊՄատ. իէ. 15։ Մար. ժե. 6։ Ղու. իգ. 17։
ՋԳործ. գ. 14։
ՌՂու. իգ. 19։

## ԳԼ. ԺԹ

1 Յիսուս կը ծեծուի. զինուորները ալ փշեայ պսակ կը դնեն անոր գլուխը, և անոր ապտակներ կը զարնեն։ 4 Պիղատոս կ'ուզէ ա-

Յամի Տեառն 33

զատել զՅիսուս ։ բայց Հրէից աղաղակներուն զիջանելով՝ ձեռք կու տայ զանիկայ որ խաչուի ։ 23 Յիսուսի պատմուճանին վրայ վիճակ կը ձգեն ։ 26 Յիսուս իր մայրը Յովհաննէսին կը յանձնէ ․ 28 կը մեռնի ։ 34 Զինուոր մը Յիսուսի կողը կը խոցէ ։ 38 Յովսէփ և Նիկոդեմոս կը թաղեն զանիկայ ։

1 Ա՛ն ատենը ա Պիղատոս առաւ Յի-
2 սուսը՝ ու ծեծեց ։ Զինուոր-
ներն ալ փուշերէ պսակ հիւսելով՝
անոր գլուխը դրին , և անոր ծիրա-
3 նի հանդերձ մը հագցուցին ․ Ու
կ'ըսէին ․ Ողջո՜յն քեզ՝ Հրէից Թա-
գաւոր ․ և ապտակներ կը զարնէին
4 անոր ։ Պիղատոս նորէն դուրս ե-
լաւ՝ ու ըսաւ անոնց ․ Ահա անի-
կայ դուրս կը բերեմ ձեզի , բ որ
գիտնաք թէ ես անոր վրայ յան-
5 ցանք մը չեմ գտներ ։ Ան ատենը
Յիսուս դուրս ելաւ , փշեղէն պը-
սակ ու ծիրանի հանդերձ հագած ․
և Պիղատոս ըսաւ անոնց ․ Ահա ան
6 մարդը ։ գ Քահանայապետները ու
սպասաւորները երբոր տեսան անի-
կայ , աղաղակեցին՝ ու ըսին ․ Խաչը
հանէ՛ խաչը հանէ ատիկայ ։ Պի-
ղատոս ըսաւ անոնց ․ Դո՛ւք առէք
ատիկայ , ու խաչը հանեցէք ․ ինչու
որ ես ատոր վրայ յանցանք մը չեմ
7 գտներ ։ Հրէաները պատասխան
տուին իրեն , դ Մենք օրէնք ունինք ,
և մեր օրէնքին համեմատ պէտք է
որ մեռնի , ե ինչու որ ինքզինքը Աս-
8 տուծոյ Որդի ըրաւ ։ Երբոր Պի-
ղատոս աս խօսքը լսեց , ալ աւելի
9 վախցաւ ։ Ու նորէն պալատը մըտ-
նելով՝ ըսաւ Յիսուսին ․ Ո՞ւսկից
ես դուն ․ զ Բայց Յիսուս պատաս-
10 խան չտուաւ անոր ։ Ուստի Պի-
ղատոս ըսաւ անոր ․ Ինծի հետ չե՞ս
խօսիր ․ չե՞ս գիտեր որ ես իշխա-
նութիւն ունիմ քեզ խաչը հանե-
լու , ու իշխանութիւն ունիմ քեզ
11 արձակելու ։ Յիսուս պատասխան
տուաւ ․ է Դուն իմ վրաս մէկ իշ-
խանութիւն մըն ալ չէիր ունե-
նար , թէ որ քեզի վերէն տրուած
չըլլար ․ անոր համար՝ ան որ զիս
քեզի մատնեց , անոր մեղքը աւելի
12 մեծ է ։ Ալ անկէ ետև Պիղատոս կը
փնտռէր թէ ի՛նչպէս զանիկայ ար-
ձակէ ․ բայց Հրէաները կ'աղա-
ղակէին ու կ'ըսէին ․ ը Թէ որ ատի-
կայ արձակես , կայսրին բարեկամը
չես ․ թ Ամէն ով որ ինքզինքը Թա-
գաւոր կ'անուանէ , անիկայ կայս-
13 րին հակառակ կը խօսի ։ Իսկ
Պիղատոս երբոր աս խօսքը լսեց ,
դուրս հանեց Յիսուսը , ու նստաւ
բեմին վրայ ան տեղը՝ որ Քարայա-
տակ կ'ըսուէր , և Եբրայեցերէն
14 Կապպաթա ․ ( ժ Զատկին ուրբաթ
օրն էր , ու ժամը վեցին ատեններն
էր , ) և Հրէաներուն ըսաւ ․ Ահա
15 ձեր Թագաւորը ։ Բայց անո՛նք
աղաղակեցին ․ Վերցո՛ւր՝ վերցո՛ւր ,
խաչը հանէ ատիկայ ․ Պիղատոս
ըսաւ անոնց ․ Ձեր Թագաւորը
խա՞չը հանեմ ․ քահանայապետնե-
րը պատասխան տուին ․ ժա Մենք
Կայսրէն 'ի զատ Թագաւոր չու-
16 նինք ։ ժբ Ան ատենը անոնց ձեռքը
տուաւ զանիկայ որ խաչուի ։
17 Անոնք ալ առին Յիսուսը ու կը
տանէին ։ ժգ Եւ ինքը իր խաչը
վերցընելով , ժդ ելաւ Գագաթ ը-
սուած տեղը , որ Եբրայեցերէն
18 Գողգոթա կ'ըսուի ․ Հոն զանիկայ
խաչը հանեցին ․ և անոր հետ ու-
րիշ երկուք ալ մէկ դիէն ու մէկալ
դիէն , և մէջտեղը Յիսուսը ։
19 ժե Տախտակ մըն ալ գրեց Պիղատոս ,
ու դրաւ խաչին վրայ ․ և այսպէս
գրուած էր՝ ՅԻՍՈՒՍ ՆԱԶՈՎՐԵ-
20 ՑԻ ԹԱԳԱՒՈՐ ՀՐԷԻՑ ։ Եւ ան
տախտակը Հրէաներէն շատերը
կարդացին , վասն զի քաղաքին
մօտ էր ան տեղը՝ ուր որ Յիսուս
խաչուեցաւ ․ ու գրուած էր
Եբրայեցերէն՝ Յունարէն և Լատի-
21 ներէն ։ Ան ատենը Հրէից քահա-
նայապետները Պիղատոսին ըսին ․
Մի՛ գրեր Թագաւոր Հրէից , հապա
թէ՝ Ինքը ըսաւ , Թագաւոր եմ
22 Հրէից ․ Պիղատոս պատասխան
տուաւ ․ Ի՛նչ որ գրեցի՝ գրեցի ։
23 ժզ Եւ զինուորները երբոր Յիսուսը
խաչը հանեցին , անոր հանդերձ-
ները առին , ու չորս բաժին ըրին՝
ամէն մէկ զինուորին բաժին մը ․
նաև պատմուճանը ․ իսկ պատմու-
ճանը առանց կարի էր վերէն 'ի
24 վար բոլորը հիւսուած ․ Ուստի ըսին
իրարու ․ Ատիկայ չպատռենք ,
հապա վիճակ ձգենք ատոր վրայ՝
թէ որու պիտի ըլլայ ․ որ կատա-
րուի ան գրուածը որ կ'ըսէ ։ ժէ Իմ
հանդերձներս իրենց մէջը բաժնե-
ցին , և իմ պատմուճանիս վրայ
վիճակ ձգեցին ․ ահա զինուորները
աս բաները ըրին ։
25 ժը Եւ Յիսուսի խաչին քովը կայներ
էին իր մայրը , և իր մօրը քոյրը
Մարիամ՝ ժթ Կղէովպասին կինը , ու
26 Մարիամ Մագդաղենացին ։ Ուս-
տի Յիսուս երբոր տեսաւ իր մայրը ,
ի և ան աշակերտը որ կը սիրէր , որ
մօտը կայներ էր , ըսաւ իր մօրը ․
27 իա Ո՛վ կին՝ ահա քու որդիդ ։ Ետ-
քը ըսաւ աշակերտին ։ Ահա քու
մայրդ ․ և ան ժամանակէն աշակեր-
տը անիկայ իբ իր քովը առաւ ։
28 Անկէ ետև Յիսուս գիտնալով
թէ արդէն ամէն բան լմընցած է ,
( իգ որպէս զի գրուածը կատարուի , )
29 ըսաւ ․ Ծարաւ եմ ։ Եւ հոն
քացախով լեցուն աման մը կար ․

ա Մատ. ի. 19 ։ իէ. 26 ։ Մար. ժե. 15 ։ Ղու. ժը. 33 ։
բ Գլ. ժը. 38 ։ Հմր 6 ։
գ Գործ. գ. 13 ։
դ Ղև. իդ. 16 ։
ե Մատ. իզ. 65 ։ Գլ. ե. 18 ։ ժ. 33 ։
զ Եսա. ծգ. 7 ։ Մատ. իէ. 12, 14 ։
է Ղու. իբ. 53 ։ Գլ. է. 30 ։
ը Ղու. իգ. 2 ։
թ Գործ. ժէ. 7 ։
ժ Մատ. իէ. 62 ։
ժա Ծն. խթ. 10 ։
ժբ Մատ. իէ. 26, 31 ։ Մար. ժե. 15 ։ Ղու. իգ. 24 ։
ժգ Մատ. իէ. 31, 33 ։ Մար. ժե. 21, 22 ։ Ղու. իգ. 26, 33 ։
ժդ Թւ. ժե. 36 ։ Եբր. ժգ. 12 ։
ժե Մատ. իէ. 37 ։ Մար. ժե. 26 ։ Ղու. իգ. 38 ։
ժզ Մատ. իէ. 35 ։ Մար. ժե. 24 ։ Ղու. իգ. 34 ։
ժէ Սաղ. իբ. 18 ։
ժը Մատ. իէ. 55 ։ Մար. ժե. 40 ։ Ղու. իգ. 49 ։
ժթ Ղու. իդ. 18 ։
ի Գլ. ժգ. 23 ։ ի. 2 ։ իա. 7, 20, 24 ։
իա Գլ. ը. 4 ։
իբ Գլ. ա. 11 ։ ժզ. 32 ։
իգ Սաղ. կթ. 21 ։

Յամի Տեառն
33

ա Մատ. իէ. 48.
չ Գլ. ժէ. 4.
դ Հմր. 42. Մար. ժե. 42.
Ըր Օր. իա. 23.
ա Յով. ե. 6. 8.
ե Ել. ժբ. 46. Թուղ. թ. 12. Սաղ. լդ. 20.
է Սաղ. իբ. 16. 17. Զաք. ժբ. 10. Յայտ. ա. 7.
ը Մատ. իէ. 57. Մար. ժե. 42. Ղու. իգ. 50.
ր Գլ. թ. 22. ժբ. 42.
թ Գլ. գ. 1. 2. է. 50.
ա Գոր. ե. 6.
ի Հմր 31.
ի Ես. ծգ. 9.

ա անոնք ալ քացախով սպունգ մը
լեցընելով՝ զոպայի մշտիկի վրայ
փաթթած, անոր բերնին մօտե-
30 ցուցին ։ Ուստի Յիսուս երբոր
քացախը առաւ, ըսաւ. Ամէն բան
կատարուեցաւ. ու գլուխը ծռելով՝
հոգին աւանդեց ։
31 Իսկ Հրէաները՝ որովհետեւ ուր-
բաթ օր էր, որ չըլլայ թէ անոր մար-
մինները խաչին վրայ մնան մինչեւ
շաբաթ օրը, (ինչու որ ան՝ շաբա-
թը մեծ օր էր,) Պիղատոսին ա-
ղաչեցին որ անոնց սրունքները կո-
32 տրրտեն, ու վերցուին ։ Ուստի զի-
նուորները եկան՝ և առջինին սրունք-
ները կոտրտեցին. նաեւ միւսինը,
33 որ անոր հետ խաչը ելած էր ։ Բայց
երբոր Յիսուսին եկան՝ ու տեսան
որ արդէն մեռած էր, անոր սրունք-
34 ները չկոտրտեցին ։ Հապա զի-
նուորներէն մէկը գեղարդով անոր
կողը խոցեց, ու և շուտ մը արիւն
35 ու ջուր ելաւ ։ Եւ ան որ տեսաւ
ու բաները՝ վկայեց, ու անոր վկա-
յութիւնը ճշմարիտ է, և ինքը գի-
տէ որ ճշմարիտ կ՚ըսէ, որ դուք
36 ալ հաւատաք ։ Ինչու որ ասոնք բա-
ները եղաւ ե որ կատարուի ան գը-
րուածը թէ, Անոր մէկ ոսկորը պի-
37 տի չկոտրուի ։ Եւ մէյմըն ալ ու-
րիշ գրուած մը կ՚ըսէ թէ, է Պիտի
նային անոր՝ որ խոցեցին ։
38 ը Անկէ ետեւ Յովսէփ՝ որ Արիմա-
թիայէն էր, (Յիսուսի աշակերտ
եղած՝ բայց գաղտուկ ր Հրէաներուն
վախէն,) աղաչեց Պիղատոսին, որ
Յիսուսի մարմինը վերցընէ. Պիղա-
տոսն ալ հրաման տուաւ. ուստի
եկաւ՝ ու վերցուց Յիսուսին մար-
39 մինը. թ Նիկոդեմոսն ալ եկաւ, (որ
ինքը առաջուց գիշերով Յիսուսին
եկեր էր,) ու բերաւ հարիւր լիտրի
չափ զմուռսի ու հալուէի խառ-
40 նուրդ մը ։ Եւ Յիսուսին մարմինը
առին՝ ու խունկերով ա փաթթե-
ցին ղանիկայ կտաւներու մէջ,
ինչպէս որ Հրէայք սովորութիւն
41 ունին թաղելու ։ Եւ ան տեղը՝
ուր որ խաչուեցաւ, պարտէզ մը
կար, ու ան պարտէզին մէջ նոր
գերեզման մը, որուն մէջը ամենեին
42 մարդ դրուած չէր ։ ի Հրէաներուն
ուրբաթին համար ի հոն դրին Յի-
սուսը, ինչու որ գերեզմանը մօտ
էր ։

ԳԼ. Ի

1 Մարիամ գերեզմանը կ՚երթայ. Յնմանապէս Պետրոս և Յովհաննէս հոն կ՚երթան, չգիտնալով թէ Քրիստոս յարութիւն առած է ։ 11 Յիսուս կ՚երեւնայ Մարիամ Մագդաղենացիին, 19 և իր աշակերտներուն ։ 24 Թովմասի թերահաւատութիւնը, և դաւանութիւնը ։ 30 Սուրբ Գիրքը բաւական է փրկութեան համար ։

1 ա Կիրակի օրը Մարիամ
Մագդաղենացին առտուանց
մութնուլուսուն գերեզմանը կու
գայ, ու կը տեսնէ որ քարը գերեզ-
2 մանին բ դռնէն վերցուած է ։ Ետքը
կը վազէ կու գայ Սիմոն Պետրոսին,
և բ միւս աշակերտին՝ որն որ Յիսուս
կը սիրէր, և կ՚ըսէ անոնց. Տէրը
գերեզմանէն վերցուցին, ու չենք
3 գիտեր ուր դրին անիկայ ։ գ Ուստի
ելաւ Պետրոս և միւս աշակերտը,
ու դէպ ՚ի գերեզմանը կու գային ։
4 Ու երկուքն ալ մէկտեղ կը վա-
զէին. և միւս աշակերտը Պետրո-
սէն աւելի շուտ վազելով՝ անկէ ա-
5 ռաջ գերեզմանը եկաւ ։ Եւ ծռե-
լով նայեցաւ, ու տեսաւ որ դ կը-
տաւները հոն կը կենային, բայց ին-
6 քը ներս չմտաւ ։ Սիմոն Պետրոսն
ալ հասաւ, որ անոր ետեւէն կու
գար, ու գերեզմանը մտաւ, և տե-
սաւ կտաւները որ հոն կը կենային.
7 ե Ու վարշամակը՝ որ անոր գլուխն
էր, ուրիշ կտաւներուն հետ չէր,
հապա ծալլած զատ մէկ կողմը դը-
8 րուած էր ։ Ան ատենը ներս մտաւ
միւս աշակերտն ալ՝ որ առաջ գե-
րեզմանը եկեր էր, տեսաւ ու հա-
9 ւատաց ։ Ինչու որ դեռ զ գրուածը
չէին գիտեր թէ, պէտք է որ անի-
կայ մեռելներէն յարութիւն առ-
10 նէ ։ Ետքը աշակերտները նորէն
իրենց տունը գացին ։
11 է Բայց Մարիամ գերեզմանին
դուրսը կայներ էր՝ և կու լար. ու
երբոր կու լար՝ դէպ ՚ի գերեզմանը
12 ծռեցաւ նայելու. Եւ տեսաւ եր-
կու հրեշտակներ ճերմակ հանդերձ-
ներով, որ նստեր էին ուր որ Յի-
սուսի մարմինը դրուած էր, մէկը
գլխուն կողմէն՝ ու միւսը ոտքին
13 կողմէն ։ Եւ անոնք իրեն ըսին.
Կնիկ՝ ինչո՞ւ կու լաս. ըսաւ ա-
նոնց. Անոր համար՝ որ իմ Տէրս
գերեզմանէն վերցուցին, ու չեմ
14 գիտեր ուր դրին անիկայ. ը Աս որ
ըսաւ, ետին դարձաւ՝ և տեսաւ Յի-
սուսը որ կայներ էր, թ ու չէր գի-
15 տեր թէ Յիսուսն է ։ Յիսուս ա-
նոր ըսաւ. Կնիկ՝ ինչո՞ւ կու լաս,
ո՞վ կը փնտռես ։ Ինքը կարծելով
թէ անիկայ պարտիզպանն է, ըսաւ
անոր. Տէր՝ թէ որ դուն վերցու-
ցիր անիկայ, ըսէ՛ ինծի՝ ո՞ւր դրիր
16 ան, որ ես անիկայ առնեմ ։ Յի-
սուս ըսաւ անոր. Մարիամ. ան
ալ դարձաւ ու * Եբրայեցերէն ա-
նոր ըսաւ, Ռաբբունի. որ Վար-
17 դապետ ըսել է ։ Յիսուս ըսաւ ա-
նոր. ինծի մի՛ դպչիր, ինչու որ
դեռ Հօրս քովը ելած չեմ. հապա
գնա ժ եղբայրներուս, և ըսէ ա-
նոնց. Ես կ՚ելլեմ իմ Հօրս քովը

Յամի Տեառն
33

ա Մատ. իը. 1. Մար. ժզ. 1. Ղու. իդ. 1.
բ Գլ. ժգ. 23. ժթ. 26. իա. 7. 20. 24.
գ Ղու. իդ. 12.
դ Գլ. ժթ. 40.
ե Գլ. ժա. 44.
զ Սաղ. ժզ. 10. Գոր. բ. 25—31. ժգ. 34. 35.
է Մար. ժզ. 5.
ը Մատ. իը. 9. Մար. ժզ. 9.
թ Ղու. իդ. 16. 31. Գլ. իա. 4.
* Ոմանք՝ Ասորերէն.
ժ Սաղ. իբ. 22. Մատ. իը. 10. Հռով. ը. 29. Եբր. բ. 11.
ի Գլ. ժզ. 28.

Յամի Տեառն 33

դ Եփե. ա. 17։
ե Մատ. իը. 10։ Ղու. իդ. 10։
զ Մար. ժզ. 14։ Ղու. իդ. 36։ ա Կոր. ժե. 5։
է Գլ. ժզ. 22։
ը Մատ. իը. 18։ Գլ. ժէ. 18, 19։ Եբր. գ. 1։ բ Տիմ. բ. 2։
թ Մատ. ժզ. 19։ ժը. 18։
ժ Գլ. ժա. 16։
ի ա Յով. ա. 1։
լ բ Կոր. ե. 7։ ա Պետ. ա. 8։
խ Գլ. իա. 25։
ծ Ղու. ա. 4։
կ Գլ. գ. 15, 16։ ե. 24։ ա Պետ. ա. 9։

ու ձեր Հօրը քովը, եւ իմ Աս-
տուծոյս քովը ու ձեր Աստուծոյն
18 քովը։ [ե] Մարիամ Մագդաղենացին
եկաւ՝ ու աշակերտներուն պատմեց
թէ ինքը Տէրը տեսաւ, և թէ անի-
կայ աս բաները իրեն զրուցեց ։
19 Եւ [զ] նոյն օրը միաշաբթի իրիկու-
նը՝ աշակերտներուն ժողվուած տե-
ղին դռները գոց ըլլալով՝ Հրեա-
ներէն վախնալնուն համար, Յի-
սուս եկաւ՝ և անոնց մէջտեղը կայ-
նեցաւ, ու ըսաւ անոնց. Խաղա-
20 ղութիւն ձեզի ։ Եւ աս ըսելով՝
իր ձեռքերը ու կողը ցուցուց ա-
նոնց. [է] աշակերտներն ալ ուրախա-
21 ցան՝ երբոր Տէրը տեսան ։ Եւ
Յիսուս նորէն ըսաւ անոնց. Խա-
ղաղութիւն ձեզի. [ը] ինչպէս որ իմ
Հայրս զիս խրկեց, ես ալ ձեզ կը
22 խրկեմ ։ Եւ աս ըսելով՝ անոնց
վրայ փչեց, ու ըսաւ անոնց. Ա-
23 ռէք Հոգին Սուրբը. [թ] Որոնց որ
մեղքերը թողուք, թողուած ըլլայ
անոնց. և որոնց որ մեղքերը ետ
բռնէք, բռնուած ըլլայ ։
24 Բայց Թովմաս տասուերկուքէն
մէկը՝ [ժ] Երկուորեակ ըսուածը ա-
նոնց հետը չէր՝ երբոր Յիսուս ե-
25 կաւ ։ Ուստի միւս աշակերտները
կ'ըսէին անոր՝ թէ Տէրը տեսանք.
ան ալ ըսաւ անոնց. Թէ որ իր
ձեռքերուն վրայ բեւեռներուն նշա-
նը չտեսնեմ, ու մատս բեւեռներուն
տեղը չխօթեմ, և իմ ձեռքս անոր
կողը չխօթեմ, չեմ հաւատար ։
26 Եւ ութը օրէն ետև դարձեալ
աշակերտները ներսն էին, Թով-
մասն ալ անոնց հետ. եկաւ Յի-
սուս՝ դռները գոց ըլլալով, ու
կայնեցաւ անոնց մէջտեղը՝ և ըսաւ.
27 Խաղաղութիւն ձեզի ։ Ետքը ը-
սաւ Թովմասին. Մատդ հոս բեր,
և նայէ իմ ձեռքերս, [ի] ու բեր քու
ձեռքդ՝ և իմ կողս խօթէ, ու մի՛
ըլլար անհաւատ, հապա հաւատա-
28 ցեալ ։ Եւ Թովմաս պատասխան
տուաւ՝ ու ըսաւ անոր. Իմ Տէրս
29 և իմ Աստուածս ։ Յիսուս ըսաւ
անոր. Որովհետև դուն զիս տե-
սար, հաւատացիր. [լ] երանի՛ անոնց
որ տեսած չեն՝ ու կը հաւատան ։
30 [խ] Եւ Յիսուս շատ ուրիշ նշաններ
ալ ըրաւ իր աշակերտներուն առ-
ջին, որ աս գրքիս մէջ գրուած
31 չեն. [ծ] Բայց ասոնք գրուեցան, որ
հաւատաք թէ Յիսուսը Քրիստոսն
է՝ Աստուծոյ Որդին. [կ] և որ հա-
ւատալով կեանք ունենաք անոր
անունովը ։

## ԳԼ. ԻԱ

1 Քրիստոս դարձեալ իր աշակերտներուն կ'երեւնայ, ու շատ ձուկ բռնել տալուն հրաշքովը կը ճանչցուի. 12 անոնց հետ ճաշ կ'ընէ. 15 խնամով պատուէր կու տայ Պետրոսին որ իր գառները ու ոչխարները արածէ. 18 կ'իմացընէ անոր թէ ինչ կերպով պիտի մեռնի. 22 և կը յանդիմանէ անոր հետաքրքրութիւնը Յովհաննէսին վրայով. 25 Վերջաբանութիւն

1 Ասկէ ետև Յիսուս նորէն ինքզինքը
իր աշակերտներուն յայտնեց
Տիբերիայի ծովուն եզերքը. և ա-
2 սանկ յայտնեց ։ Մէկտեղ էին Սի-
մոն Պետրոս, ու Թովմաս՝ Երկուո-
րեակ ըսուածը, և [ա] Նաթանայէլ՝
որ Գալիլեայի Կանայ քաղաքէն էր,
ու [բ] Զեբեդէոսի որդիքը՝ և աշա-
3 կերտներէն ուրիշ երկուք ալ ։ Սի-
մոն Պետրոս ըսաւ անոնց. Ես ձուկ
որսալու կ'երթամ. ըսին անոր.
Մենք ալ կու գանք քեզի հետ.
ելան և շուտ մը նաւը մտան, ու
4 ան գիշերը բան մը չբռնեցին ։ Ու
երբոր ալ առտու եղաւ, Յիսուս
ծովուն եզերքը կայներ էր, բայց
աշակերտները [գ] չճանչցան թէ Յի-
5 սուսն է ։ Իսկ [դ] Յիսուս ըսաւ ա-
նոնց. Տղա՛ք. ուտելու բան մը ու-
նի՞ք. պատասխան տուին իրեն.
6 Ո՛չ ։ Եւ ըսաւ անոնց. [ե] Ուռ-
կանը նաւուն աջ կողմը ձգեցէք՝ ու
պիտի գտնէք. ուստի ձգեցին, և
ձուկերուն շատութենէն ալ չէին
7 կրնար զանիկայ քաշել ։ [զ] Ան ա-
տենը ան աշակերտը՝ որն որ Յիսուս
կը սիրէր, ըսաւ Պետրոսին. Անի-
կայ Տէրն է. իսկ Սիմոն Պետրոս
երբոր լսեց թէ Տէրն է, վերարկուն
վրան առաւ, ինչու որ մերկ էր, ու
8 ծովը նետուեցաւ ։ Եւ միւս աշա-
կերտները նաւակովը եկան. (ինչու
որ ցամաքէն հեռու չէին, միայն
թէ երկու հարիւր կանգունի չափ,)
և ուռկանը ձուկերովը կը քաշէին ։
9 Ու երբոր ցամաքը ելան, հոն տե-
ղը վառած կրակ տեսան, ու վրան
10 ձուկ դրուած, և հաց ։ Յիսուս
ըսաւ անոնց. Բերէք աս ձուկե-
11 րէն որ դուք հիմա բռնեցիք ։ Սի-
մոն Պետրոս նաւը * մտաւ, և ուռ-
կանը ցամաքը քաշեց՝ հարիւր յի-
սունուիրեք խոշոր ձուկերով լե-
ցուն. և այնչափ բան կար, ու
12 չպատռեցաւ ուռկանը ։ Յիսուս
ըսաւ անոնց. [է] Եկէք ճաշ ըրէք.
ու աշակերտներէն մէկն ալ չէր հա-
մարձակեր անոր հարցընելու՝ թէ
Դուն ո՞վ ես. ինչու որ գիտէին
13 թէ Տէրն է ։ Ան ատենը Յիսուս
եկաւ՝ ու առաւ հացը և անոնց
14 տուաւ, նոյնպէս ալ ձուկը ։ [ը] Աս
երրորդ անգամն է որ Յիսուս իր
աշակերտներուն երեցաւ՝ մեռելնե-
րէն յարութիւն առնելէն ետև ։
15 Ու երբոր ճաշը ըրին, Յիսուս
ըսաւ Սիմոն Պետրոսին. Սիմո՛ն
Յովնանին որդի, զիս ասոնցմէ

Յամի Տեառն 33

ա Գլ. ա. 45։
բ Մատ. դ. 21։
գ Գլ. ի. 14։
դ Ղու. իդ. 41։
ե Ղու. ե. 4, 6, 7։
զ Գլ. ժգ. 23։ ի. 2։
* Յուն. Ելաւ։
է Գոր. ժ. 41։
ը Գլ. ի. 19, 26։

Ցամի Տեառն 33

աւելի կը սիրե՞ս . անիկայ ըսաւ
անոր . Այո՛ Տէ՛ր , դուն գիտես որ
քեզ կը սիրեմ . ըսաւ անոր . Ա-
16 րածէ իմ գառնուկներս ։ Նորէն
երկրորդ անգամ ըսաւ անոր . Սի-
մո՛ն Յովնանին որդին , զիս կը սի-
րե՞ս . ըսաւ անոր . Այո՛ Տէ՛ր ,
դուն գիտես որ քեզ կը սիրեմ .
[ն] ըսաւ անոր . Արածէ իմ ոչխար-
17 ներս ։ Ըսաւ անոր երրորդ ան-
գամ . Սիմո՛ն Յովնանին որդին ,
զիս կը սիրե՞ս . Պետրոս տրտմե-
ցաւ որ իրեք անգամ իրեն ըսաւ
թէ՝ Զիս կը սիրե՞ս . և ըսաւ ա-
նոր . Տէ՛ր՝ [ծ] դուն ամէն բան գիտես ,
դուն գիտես որ ես քեզ կը սիրեմ .
ըսաւ անոր Յիսուս . Արածէ իմ
18 ոչխարներս ։ [կ] Ճշմարիտ ճշմարիտ
կ'ըսեմ քեզի , որ երբ դուն պա-
տանի էիր , ինքնիրմէդ գօտի կը կա-
պէիր , ու կ'երթայիր ուր որ ու-
զէիր . բայց երբոր ծերանաս , ձեռ-
քերդ վեր պիտի բռնես , և ուրիշը
քեզի գօտի պիտի կապէ , ու պիտի
19 տանի ուր որ չես ուզեր ։ Աս բա-
նը ըսաւ , ցուցընելով թէ [հ] անիկայ
ինչ մահով պիտի փառաւորէ զԱս-
տուած . ու երբոր աս զրուցեց ,
ըսաւ անոր . Եկուր իմ ետևէս ։

20 Եւ Պետրոս դարձաւ՝ ու տեսաւ
ան աշակերտը՝ [ի] որն որ Յիսուս կը
սիրէր , որ ետևէն կ'երթար , (որնա-
և ընթրիքին ատենը անոր կուրծ-
քին վրայ ինկեր՝ և ըսեր էր , Տէ՛ր
ո՞վ է որ քեզ պիտի մատնէ ։ )
21 Պետրոս անիկայ տեսնելով , ըսաւ
Յիսուսին . Տէ՛ր՝ հապա ասիկայ
22 ի՞նչ պիտի ըլլայ ։ Յիսուս ըսաւ
անոր . Թէ որ ես ուզեմ՝ որ ասի-
կայ կենայ [մ] մինչև որ ես գամ , քու
ի՞նչ հոգդ է . դուն իմ ետևէս
23 եկուր ։ Ալ աս խօսքը ելաւ եղ-
բայրներուն մէջ , թէ ան աշակեր-
տը պիտի չմեռնի . սակայն Յիսուս
չըսաւ անոր թէ պիտի չմեռնի , հա-
պա թէ որ ես ուզեմ՝ որ ասիկայ
կենայ մինչև որ ես գամ , քու ի՞նչ
հոգդ է ։
24 Ասիկայ ան աշակերտն է , որ կը
վկայէ աս բաներուս համար , որ
գրեց ալ աս բաները . [ն] ու գիտենք
որ անոր վկայութիւնը ճշմարիտ է ։
25 [շ] Եւ ուրիշ շատ բաներ ալ կան ,
որ Յիսուս ըրաւ , որոնք եթէ մէ-
կիկ մէկիկ գրուած ըլլային , [ո] կար-
ծեմ թէ աշխարհս ալ բաւական
պիտի չըլլար պարունակելու ան
գիրքերը որ գրուած ըլլային ։

ն Գոր . ի . 28 ; Եբր . ժգ . 20 ; ա Պետ . բ . 25 ; ե . 2 , 4 ։
ծ Գլ . բ . 24 , 25 ; ժզ . 30 ։
կ Գլ . ժգ . 36 ; Գոր . ժբ . 3 , 4 ։
հ Բ Պետ . ա . 14 ։

Ցամի Տեառն 33
ի Գլ . ժգ . 23 , 25 ; ի . 2 ։
մ Մատ . ժզ . 27 , 28 ; իե . 31 ; ա Կոր . դ . 5 ; ժա . 26 ; Յայտ . բ . 25 ; գ . 11 ; իբ . 7 , 20 ։
ն Գլ . ժթ . 35 ; գ Յով . 12 ։
շ Գլ . ի . 30 ։
ո Սղմ . կ . 10 ։

# ԳՈՐԾՔ ԱՌԱՔԵԼՈՑ

Ցամի Տեառն 33

## ԳԼՈՒԽ Ա

¹ Քրիստոս դեռ երկինքը չհամբարձած՝ իր աշակերտներուն կը պատուիրէ Երուսաղէմի մէջ Հոգւոյն Սրբոյ գալստեանը սպասել , խոստանալով որ քիչ օրերէ ետև պիտի խրկէ զանիկայ ։ 9 Իր համբարձումէն ետև՝ երկու հրեշտակներ կ'երևնան անոնց , ու իր երկրորդ գալստեանը վրայով կը խօսին ։ 12 Առաքեալները Երուսաղէմ կը դառնան , ու աղօթքի կը պարապին , և Մատաթիան առաքեալ կ'ընտրեն՝ մատնիչ Յուդային տեղը ։

1 Առջի պատմութիւնը որ ըրի՝ ո՛վ
[ա] Թէոփիլոս , ան ամէն բաներուն
վրայ՝ որ Յիսուս սկսաւ ընել և
2 սորվեցընել , [բ] Մինչև ան օրը՝ որ
Հոգւոյն Սրբոյ միջոցովը պատուէր
տուաւ իր ընտրած առաքեալնե-
3 րուն , [գ] ու համբարձաւ . [դ] Որ ա-
նոնց ինքզինքը ցուցուց կենդանի իր
չարչարանքներէն ետև՝ շատ ապա-
ցոյցներով , քառասուն օրուան մէջ
անոնց երևնալով , ու Աստուծոյ
թագաւորութեանը վրայ խօսե-
4 լով ։ [ե] Եւ անոնց հետ մէկտեղ
* գտնուած ատենը՝ կ'ապսպրէր ա-
նոնց որ Երուսաղէմէն չհեռանան ,
հապա սպասեն Հօրը խոստմուն-
քին , [զ] որ ան ինծմէ լսեցիք ՝ը-
5 սէր ։ [է] Ինչու որ իրաւ Յովհան-
նէս ջրով մկրտեց , [ը] բայց դուք
ասկէ շատ օրեր չանցած՝ Սուրբ
6 Հոգիով պիտի մկրտուիք ։ Ա-
նոնք ալ մէկտեղ գալով կը հար-
ցընէին իրեն ու կ'ըսէին . [թ] Տէ՛ր՝
[ժ] Իսրայէլի թագաւորութիւնը աս
ժամանակի՞ս մէջ նորէն պիտի
7 հաստատես ։ Եւ ըսաւ անոնց .
[ի] Ձեզի չվերաբերիր ժամերը և ժա-
մանակները գիտնալը , որն որ
Հայրը իր իշխանութեանը մէջ դը-
8 րաւ , Բայց [լ] Հոգւոյն Սրբոյ ձեր
վրայ եկած ատենը [խ] զօրութիւն

ա Ղու . ա . 3 ։
բ Մատ . իը . 19 ; Մար . ժզ . 15 ; Յով . ի . 21 ; Գլ . ժ . 41 , 42 ։
գ Մար . ժզ . 19 ; Ղու . թ . 51 ; իդ . 51 ; Հմր 9 ; ա Տիմ . գ . 16 ։
դ Մար . ժզ . 14 ; Ղու . իդ . 36 ; Յով . ի . 19 , 26 ; իա . 1 , 14 ; ա Կոր . ժե . 5 ։

Ցամի Տեառն 33
ե Ղու . իդ . 43 , 49 ։
* Կամ հաց կերած
զ Ղու . իդ . 49 ; Յով . ժդ . 16 , 26 , 27 ; ժե . 26 ; ժզ . 7 ; Գլ . բ . 33 ։
է Մատ . գ . 11 ; Գլ . ժա . 16 ; ժթ . 4 ։
ը Յովել . գ . 18 ; Գլ . բ . 4 ; ժա . 15 ։
թ Մատ . իդ . 3 ։
ժ Եսա . ա . 26 ; Դան . է . 27 ; Ամով . թ . 11 ։
ի Մատ . իդ . 36 ; Մար . ժգ . 32 ; ա Թես . ե . 1 ։
լ Ղու . իդ . 49 ։
խ Գլ . բ . 1 , 4 ։

Յամի Տեառն 33

Ղու. իդ. 48 ։ Յով. ժե. 27 ։ Հծ. 22 ։ Գլ. բ. 32 ։
Ղու. իդ. 51 ։ Յով. զ. 63 ։ Հծ. 2 ։
Մատ. իը. 3 ։ Մրկ. ժզ. 5 ։ Ղու. իդ. 4 ։ Յով. ի. 12 ։ Գլ. ժ. 3. 30 ։
Գլ. բ. 7 ։ ժգ. 31 ։
Դան. է. 13 ։ Մատ. իդ. 30 ։ Մար. ժդ. 26 ։ Ղու. իա. 27 ։ Յով. ժդ. 3 ։ ա Թես. ա. 10 ։ դ. 15 ։ բ Թես. ա. 10 ։ Յայտ. ա. 7 ։
Ղու. իդ. 52 ։
Գլ. Թ. 37. 39 ։ ի. 8 ։
Մատ. ժ. 2. 3. 4 ։
Ղու. զ. 15 ։
Յուդ. 1 ։
Գլ. բ. 1. 46 ։
Ղու. իդ. 49. 53 ։ իդ. 10 ։
Մատ. ժգ. 55 ։
Սաղ. խա. 9 ։ Յով. ժգ. 18 ։
Ղու. իբ. 47 ։ Յով. ժբ. 3 ։
Մատ. ժ. 4 ։ Ղու. զ. 16 ։
Հծ. 25 ։ Գլ. ժբ. 25 ։ ի. 24 ։ իա. 19 ։
Մատ. իզ. 15 ։ բ Պետ. բ. 15 ։
Մատ. իէ. 5. 7. 8 ։
Սաղ. կթ. 25 ։
Սաղ. ճթ. 8 ։

պիտի առնէք , ու ինծի համար
վկաներ պիտի ըլլաք Երուսաղէմի
մէջ՝ և բոլոր Հրէաստանի ու Սա-
մարիայի մէջ՝ ու մինչև երկրի ծայ-
9 րերը ։ Եւ աս բաները որ ըսաւ ,
երբոր անոնք կը նայէին , համ-
բարձաւ , և ամպ մը զանիկայ ա-
10 նոնց աչքէն բռնեց ։ Ու քանի որ
աչքերնին տնկած դէպ 'ի երկինքը
կը նայէին անոր երթալուն վրայ ,
ահա երկու մարդ իրենց քովը կայ-
նեցան ճերմակ հանդերձներով ,
11 Որոնք նաև ըսին . Ո՛վ Գալիլեա-
ցի մարդիկ՝ ինչո՞ւ կայներ դէպ 'ի
երկինքը կը նայիք . աս Յիսուսը՝
որ ձեզմէ երկինքը համբարձաւ ,
ասանկ պիտի գայ՝ ինչպէս որ տե-
12 սաք անոր երկինք երթալը ։ Ան
ատենը Երուսաղէմ դարձան Ձի-
թենեաց ըսուած լեռնէն , որ շա-
բաթ օրուան ճամբու չափ մօտ է
13 Երուսաղէմին ։ Ու երբոր քաղաքը
մտան , ելան վերնատունը , ուր
որ կը բնակէին՝ Պետրոս և Յակո-
բոս , Յովհաննէս և Անդրէաս , Փի-
լիպպոս և Թովմաս , Բարթուղիմէ-
ոս և Մատթէոս , Յակոբոս Ալ-
փէոսեան ու Սիմոն Նախանձա-
14 յոյզ՝ և Յուդա Յակոբեան ։ Ա-
սոնք ամէնը միաբանութեամբ միշտ
աղօթք ու աղաչանք կ'ընէին կը-
նիկներուն հետ , և Յիսուսի մօրը
Մարիամին՝ ու անոր եղբայրնե-
րուն հետ մէկտեղ ։
15 Եւ ան օրերը ելաւ Պետրոս ա-
շակերտներուն մէջը , ( որ հա-
րիւր քսան հոգիի չափ ժողվուած
բազմութիւն կար , ) ու ըսաւ .
16 Մարդիկ եղբայրներ՝ պէտք էր որ
կատարուէր աս գրուածը , որն որ
առաջուց Հոգին Սուրբ Դաւիթին
բերնովը ըսաւ Յուդային համար՝
որ Յիսուսը բռնողներուն առաջ-
17 նորդ եղաւ . Ինչու որ անիկայ
մեզի հետ էր մեր համրանքին մէջ ,
և աս պաշտօնէն ան ալ բաժին
18 ունէր ։ Ասիկայ անիրաւութեան
վարձքով ագարակ մը ստացաւ ,
ու գլխիվար իյնալով՝ մէջտեղէն
ճեղքուեցաւ , և իր ամէն փորոտիքը
19 դուրս թափեցաւ ։ Ու աս բանը
Երուսաղէմ բնակողներուն ամե-
նուն յայտնի եղաւ , մինչև որ
իրենց լեզուովը ան ագարակին ա-
նունը Ակեղդամա դրուեցաւ , այս-
20 ինքն՝ Արեան ագարակ ։ Ինչու որ
Սաղմոսաց գրքին մէջ գրուած է
թէ ; Անոր բնակարանը աւերակ
ըլլայ , ու անոր մէջը բնակող մը
չըլլայ , և անոր պաշտօնը ուրիշը
21 առնէ ։ Ուրեմն պէտք է որ աս
մարդիկներէն՝ որ մեր հետը եղան
ան բոլոր ատենը , որ Տէր Յիսուս
22 մէջերնիս մտաւ ու ելաւ , Յով-
հաննէսին մկրտութենէն սկսած՝
մինչև ան օրը որ մեզմէ համբար-
ձաւ , ասոնցմէ մէկը մեզի հետ
վկայ ըլլայ անոր յարութեանը ։
23 Եւ երկու հոգի կայնեցուցին , Յով-
սէփը՝ որ Բարսաբայ կը կոչուէր ,
որ Յուստոս ալ մականուանեցաւ ,
24 ու Մատաթիան . Եւ աղօթք ընե-
լով՝ ըսին . Դուն՝ ո՛վ Տէր , որ
ամենուն սիրտը գիտես , աս երկու-
քէս մէկը՝ որն որ ընտրեցիր , դուն
25 յայտնէ . Որ աս պաշտօնիս և
առաքելութեանս վիճակը առնէ ,
որ անկէ Յուդան ինկաւ իր տեղը
26 երթալու ։ Եւ անոնց համար վի-
ճակ ձգեցին , ու վիճակը Մատա-
թիային ելաւ . և անիկայ տասը-
նումէկ առաքելոց հետ սեպուե-
ցաւ ։

## ԳԼ . Բ

1 Առաքեալները Սուրբ Հոգիով լեցուած՝ զանազան լեզուներ կը խօսին , ոմանք կը զարմանան անոնց վրայ , և ոմանք ալ ծաղր կ'ընեն զանոնք ։ 14 Պետրոս պատասխան կու տայ անոնց , և կը ցուցընէ թէ առաքեալները Սուրբ Հոգիին զօրութեամբը կը խօսէին , թէ Յիսուս մեռելներէն յարութիւն առած՝ երկինքը համբարձած է , և թէ ան նոյն Սուրբ Հոգին խրկած է ։ 37 Շատ մարդիկ դարձի գալով կը մկրտուին . 41 որոնք ջերմեռանդութեամբ և սիրով կը միաբանին զԱստուած պաշտելու ։ 43 Առաքեալները շատ հրաշքներ և նշաններ կ'ընեն , և Աստուած ամէն օր իր եկեղեցին կ'աճեցընէ ։

1 Եւ Պենտէկոստէին օրը հասնե-
լուն՝ ամէնքն ալ միաբան մէկ-
2 տեղ էին ։ Ու յանկարծակի եր-
կինքէն ձայն մը եղաւ՝ սաստկա-
շունչ հովի մը շառաչին պէս , և բո-
լոր տունը լեցուց՝ ուր որ նստեր
3 էին ։ Եւ բաժնուած լեզուներ
երևցան իրենց՝ որպէս թէ կրակէ ,
4 ու ամէն մէկուն վրայ նստաւ ։ Եւ
ամէնքն ալ Հոգւով Սրբով լե-
ցուեցան , ու սկսան ուրիշ լեզու-
ներով խօսիլ , ինչպէս որ Հոգին
5 իրենց խօսիլ կու տար ։ Ու Երու-
սաղէմ մէջ բնակած Հրէաներ
կային՝ աստուածավախ մարդիկ եր-
կինքին տակը եղած բոլոր ազգերէն
6 ժողվուած ։ Ու երբոր աս ձայնը
եղաւ , բազմութիւնը մէկտեղ ե-
կաւ ու խռովեցաւ , ինչու որ կը
լսէին որ անոնք իրենց ամէն մէկուն
7 լեզուովը կը խօսէին ։ Ամէնքն ալ
կը սքանչանային ու կը զարմանային՝
և իրարու կ'ըսէին . Չէ՞ որ ահա
ասոնք ամէնն ալ որ կը խօսին ,
8 Գալիլեացի են . Եւ ինչպէս կը
լսենք մենք մեր ամէն մէկ լեզուովը՝
9 որ անոր մէջը ծնած ենք . Պարթևք
և Մարք ու Եղամացիք , և անոնք
որ կը բնակին Միջագետի մէջ , և
Հրէաստանի ու Կապադովկիայի

Յամի Տեառն 33

Մար. ա. 1 ։ Հծ. 9 ։ Յով. ժե. 27 ։ Հծ. 8 ։ Գլ. դ. 33 ։ Գլ. ժե. 22 ։
բ Թագ. ժզ. 7 ։ Մն. իը. 9 ։ իթ. 17 ։ Երեմ. ժա. 20 ։ ժէ. 10 ։ Գլ. ժե. 8 ։ Յայտ. բ. 23 ։ Հծ. 17 ։
Ղև. իգ. 15 ։ բ Օր. ժզ. 9 ։ Գլ. ի. 16 ։
Գլ. ա. 14 ։
Գլ. դ. 21 ։
Գլ. ա. 5 ։
Մար. ժզ. 17 ։ Գլ. ժ. 46 ։ ժթ. 6 ։ ա Կոր. ժբ. 10. 28. 30 ։ ժգ. 1 ։ ժդ. 2 ։
Գլ. ա. 11 ։

Յամ. Տեառն
33

մէջ , Պոնտոսի ու Ասիայի մէջ ,
10 Փռիւգիայի և Պամփիւլիայի մէջ .
Եգիպտոսի մէջ , և Կիւրենէի մօտ
Լիբէացւոց կողմերուն մէջ . Նաև
11 Հռովմայեցի պանդուխտներ , թէ
Հրէաներ և թէ Նորահաւատներ .
Կրետացիներ և Արաբացիներ , կը
լսենք անոնցմէ որ մեր լեզուներով
կը խօսին Աստուծոյ մեծամեծ բա-
12 ները ։ Կը զարմանային ամէնքն ալ ,
ու տարակուսած իրարու կ՚ըսէին ,
13 Ի՞նչ պիտի ըլլայ աս ։ Ոմանք ալ
ծաղր ընելով կ՚ըսէին թէ , Անոնք
նոր գինիով լեցուեր են ։
14 Բայց Պետրոս ելաւ տասնումէ-
կին հետ մէկտեղ , ձայնը վերցուց
ու խօսեցաւ անոնց ․ Ո՛վ Հրեայ
մարդիկ՝ և դուք ամէնքդ որ Երու-
սաղէմ կը բնակիք , աս ձեզի յայտ-
նի ըլլայ , ու ականջ դրէք իմ
15 խօսքերուս ։ Քանզի չէ՝ թէ ա-
սոնք գինովցած են՝ ինչպէս որ
դուք կը կարծէք , ինչու որ փե-
16 օրուան երրորդ ժամն է ․ Հապա
ասիկայ ան է , որ Յովէլ մարգա-
17 րէին ձեռքովը ըսուեցաւ ․ Եւ պի-
տի ըլլայ որ վերջին օրերը՝ կ՚ըսէ
Աստուած , իմ Հոգիէս ամէն
մարմնոյ վրայ պիտի թափեմ , ու
ձեր տղաքը և ձեր աղջիկները պի-
տի մարգարէանան , ու ձեր երիտա-
սարդները տեսիլքներ պիտի տես-
նեն , և ձեր ծերերը երազներ պիտի
18 տեսնեն ․ Եւ իմ ծառաներուս վրայ
ու իմ աղախիններուս վրայ ալ՝ ան
օրերը իմ Հոգիէս պիտի թափեմ ,
19 և պիտի մարգարէանան ։ Ու վերը
երկինքը հրաշքներ պիտի ցուցը-
նեմ , ու վարը երկիրը նշաններ ,
արիւն ու կրակ և ծուխի մառա-
20 խուղ ․ Արևը խաւարի պիտի
դառնայ , և լուսինը արիւնի , դեռ
Տէրոջը մեծ ու երևելի օրը չեկած ,
21 Եւ պիտի ըլլայ որ՝ ամէն ով որ
Տէրոջը անունը կանչէ , պիտի փրը-
22 կուի ։ Ով Իսրայէլացի մարդիկ
լսեցէք աս խօսքերը ․ Յիսուս Նա-
զովրեցին՝ Աստուծմէ ձեզի ցու-
ցուած մարդ մը զօրութիւններով
ու հրաշքներով և նշաններով , որ
Աստուած անոր ձեռքովը ըրաւ ձեր
մէջը , ինչպէս որ դուք ալ գիտէք ․
23 Անիկայ Աստուծոյ որոշած խոր-
հուրդովը և կանխագիտութեամբը
սահմանուած ըլլալով , առիք և
անօրէններու ձեռքով փայտի վրայ
24 գամելով սպաննեցիք ․ Որն որ
Աստուած յարուց՝ մահուան ցաւե-
րը քակելով ․ քանզի չէր որ
25 ինքը անկէ բռնուի ։ Ինչու որ
Դաւիթ անոր համար կ՚ըսէ ․ Ա-
ռաջուց ամէն ատեն Տէրը կը տես-
նէի իմ առջիս ․ քանզի իմ աջ

ե Թես. Ե. 7.
զ Եսայ. ԽԴ. 3. Եզեկ. ԺԱ. 19. ԼԶ. 27. Յովել. Բ. 28. 29. Զաք. ԺԲ. 10. Յով. Է. 38.
է Գործ. Ժ. 45.
ը Գործ. ԻԱ. 9.
թ Գործ. ԻԱ. 4. 9. 10. Ա Կոր. ԺԲ. 10. 28. ԺԴ. 1. ...
ժ Յովել. Բ. 30. 31.
ժա Մատթ. ԻԴ. 29. Մարկ. ԺԳ. 24. Ղուկ. ԻԱ. 25.
ժբ Հռովմ. Ժ. 13.
ժգ Յովհ. Գ. 2. ԺԴ. 10. 11. Գործ. Ժ. 38. Եբր. Բ. 4.
ժդ Մատթ. ԻԶ. 24. Ղուկ. ԻԲ. 22. ԻԴ. 44. Գործ. Դ. 28. Գ. 28.
ժե Գործ. Ե. 30. Կամ անօրէնի
ժզ Հմր. 32. Գործ. Գ. 15. Դ. 10. Ժ. 40. ԺԳ. 30. 34. ԺԷ. 31. Հռովմ. Դ. 24. Ը. 11. Ա Կոր. Զ. 14. ԺԵ. 15. Բ Կոր. Դ. 14. Գաղ. Ա. 1. Եփե. Ա. 20. Կող. Բ. 12. Ա Թես. Ա. 10. Եբր. ԺԳ. 20. Ա Պետ. Ա. 21.
ժէ Սաղ. ԺԶ. 8.

26 կողմս է , որ չսասանիմ ․ Անոր հա-
մար ուրախ եղաւ իմ սիրտս , ու
իմ լեզուս ցնծաց , նաև իմ մարմինս
ալ յուսով պիտի հանգստանայ ։
27 Վասն զի իմ անձս դժոխքին մէջը
պիտի չթողուս , ու քու Սուրբիդ
ալ ապականութիւն տեսնել պիտի
28 չտաս ։ Կենաց ճամբաները ինծի
ճանչցուցիր ․ քու երեսիդ ուրա-
խութիւնովը զիս պիտի լեցնես ։
29 Մարդիկ եղբայրներ՝ արժան է հա-
մարձակ գրուցել ձեզի Դաւիթ
նահապետին համար , թէ մեռաւ
ու թաղուեցաւ ․ և անոր գերեզմա-
նը մինչև աս օրս մեր մէջն է ․
30 Արդ որովհետև անիկայ մարգարէ
էր , և գիտէր , թէ Աստուած հաս-
տատ երդում ըրաւ իրեն թէ իր
երիկամանցը պտուղէն մարմնոյ կող-
մանէ Քրիստոսը պիտի յարուցանէ
31 որ իր աթոռը նստի ․ Ինքը կան-
խատեսութեամբ խօսեցաւ Քրիս-
տոսի յարութեանը համար , թէ
անոր հոգին դժոխքը չթողուեցաւ ,
և անոր մարմինը ապականութիւն
32 չտեսաւ ։ Աս Յիսուսը Աստուած
յարուց , որուն մենք ամէնքս ալ
33 վկայ ենք ։ Ուստի Աստուծոյ աջ
ձեռքովը բարձրանալով , ու Հո-
գւոյն Սրբոյ խոստմունքը Հօրմէն
առնելով , տարածեց ասիկայ , որ
դուք հիմա կը տեսնէք և կը լսէք ։
34 Ինչու որ Դաւիթ երկինքը չելաւ ․
բայց ինքը կ՚ըսէ ․ Տէրը իմ Տէ-
րոջս ըսաւ ․ Նստէ իմ աջ կողմս ,
35 Մինչև որ քու թշնամիներդ ոտ-
քերուդ պատուանդան ընեմ ։
36 Ուստի բոլոր Իսրայէլի տունը ճըշ-
մարտապէս թող գիտնայ , որ Աս-
տուած անիկայ Տէր ալ ըրաւ՝ Օ-
ծեալ ալ , ան Յիսուսը որ դուք
խաչեցիք ։
37 Ու երբ որ լսեցին՝ սրտերնին
կսկծաց , և ըսին Պետրոսին ու
միւս առաքեալներուն ․ Մարդիկ
38 եղբայրներ՝ ի՞նչ ընենք ։ Եւ
Պետրոս ըսաւ անոնց ․ Ապաշխա-
րեցէք , ու ձեզմէ ամէն մէկը թող
մկրտուի Յիսուս Քրիստոսի անու-
նովը մեղաց թողութեան համար ․
և Հոգւոյն Սրբոյ պարգևը պիտի
39 ընդունիք ։ Ինչու որ խոստմունքը
ձեզի է ու ձեր որդւոցը , և ամէն
հեռու եղողներուն՝ որոնք որ մեր
40 Տէր Աստուածը կանչէ ։ Եւ ու-
րիշ շատ խօսքերով վկայութիւն
կու տար , ու կը յորդորէր զանոնք
և կ՚ըսէր ․ Աս ծուռ ազգէն ինք-
41 զինքնիդ ազատեցէք ։ Եւ անոնք
որ սրտանց ընդունեցին անոր խօս-
քերը , մկրտուեցան ․ ու ան օրը
իրեք հազար հոգիի չափ աւելցան ․
42 Եւ միշտ առաքելոց վարդապետու-

Յամ. Տեառն
33

ժը Գ Թագ. Բ. 10. Գործ. ԺԳ. 36.
ժթ Բ Թագ. Է. 12. 13. Սաղ. ՃԼԲ. 11. Ղուկ. Ա. 32. 69. Հռովմ. Ա. 3. Բ Տիմ. Բ. 8.
ի Սաղ. ԺԶ. 10. Գործ. ԺԳ. 35.
իա Հմր. 24.
իբ Գործ. Ա. 8.
իգ Գործ. Ե. 31. Փիլ. Բ. 9. Եբր. Ժ. 12.
իդ Յով. ԺԴ. 26. ԺԵ. 26. ԺԶ. 7. 13. Գործ. Ա. 4.
իե Գործ. Ժ. 45. Եփե. Դ. 8.
իզ Սաղ. ՃԺ. 1. Մատթ. ԻԲ. 44. Մարկ. ԺԲ. 36. Ղուկ. Ի. 42. 43. Եբր. Ա. 13.
իէ Գործ. Ե. 31.
իը Զաք. ԺԲ. 10. Ղուկ. Գ. 10. Գործ. Թ. 6. ԺԶ. 30.
իթ Ղուկ. ԻԴ. 47. Գործ. Գ. 19.
լ Յովել. Բ. 28. Գործ. Գ. 25.
լա Գործ. Ժ. 45. ԺԱ. 15. 18. ԺԴ. 26. ԺԵ. 3. 8. 14. Եփե. Բ. 13. 17.
լբ Հմր. 46. Գործ. Ա. 14. Հռովմ. ԺԲ. 12. Եփե. Զ. 18. Կող. Դ. 2. Եբր. Ժ. 25.

Ցամ Տեառն 33

թեանը ևտևէ էին , ու միաբանու-
թեանը , և հաց կտրելուն , ու ա-
ղօթքներուն ։
43 Եւ ամէն մարդու վրայ վախ ին-
կաւ . և առաքելոց ձեռքովը շատ
հրաշքներ ու նշաններ կը գոր-
44 ծուէին ։ Ու բոլոր հաւատացեալ-
ները մէկտեղ էին , և ամէն բա-
45 ներնին հասարակաց էր ։ Ու ստա-
ցուածքնին և ունեցած բաներնին
կը ծախէին , ու անոնց գինը կը
բաժնէին ամենուն , որուն որ բան
46 մը պէտք ըլլար ։ Եւ ամէն օր
միաբանութեամբ տաճարը եր-
թալու ետևէ էին , և տուներնին
հաց կը կտրէին , ու կերակուրնին
կ'ուտէին ուրախութեամբ և միա-
47 մտութեամբ սրտի . Աստուած
կ'օրհնէին , ու բոլոր ժողովուրդին
առջեն ալ շնորհք կը գտնէին .
և Տէրը օրէ օր փրկուածները կ'ա-
ւելցնէր եկեղեցիին ։

Մար. ժզ. 17 ։ Գլ. դ. 33 ։ ե. 12 ։ Գլ. դ. 32, 34 ։ Եւ. ծը. 7 ։ Գլ. ա. 14 ։ Ղու. իդ. 53 ։ Գլ. ե. 42 ։ Գլ. ի. 7 ։ Ղու. բ. 52 ։ Գլ. դ. 33 ։ Հռով. ժդ. 18 ։ Գլ. ե. 14 ։ ժա. 24 ։

ԳԼ. Գ

1 Պետրոս կը քարոզէ բժշկուած կաղը տեսնելու եկող ժողովրդոց . 12 կը խոստովանի որ անբժշկութիւնը չէ՛ թէ իրեն կամ Յովհաննէսին զօրութեամբը եղաւ , այլ Աստուծոյ և իր Որդւոյն Յիսուսին ձեռքը . ու անոր անուանը հաւատքովը . 13 Նաև կը յանդիմանէ զանոնք Յիսուսը խաչելնուն համար ։ 19 և կը յորդորէ զանոնք զղջումով ու հաւատքով թողութիւն խնդրելու իրենց մեղքերուն , և փրկուելու անոր Յիսուսով ։

1 Յետոյ Պետրոս ու Յովհաննէս իննըորդ ժամու աղօթքին ատենը
2 մէկտեղ տաճարը կ'ելլէին ։ Եւ
իր մօրը որովայնէն կաղ ծնած մարդ
մը կը բերուէր , որ զանիկայ ամէն
օր տաճարին Գեղեցիկ կոչուած դը-
րանը քով կը դնէին , որ տաճարը
մտնողներէն ողորմութիւն խնդրէ ։
3 Անիկայ տեսնելով Պետրոսը և
Յովհաննէսը որ տաճարը մտնելու
վրայ էին , կ'աղաչէր որ ողորմու-
4 թիւն առնէ ։ Իսկ Պետրոս Յով-
հաննէսին հետ մէկտեղ անոր նա-
5 յեցաւ ու ըսաւ . Մեզի՛ նայէ . Ան
ալ դէպ 'ի անոնց դարձաւ , ու կը
յուսար անոնցմէ բան մը առնել ։
6 Եւ Պետրոս ըսաւ . Արծաթ ու
ոսկի չունիմ , հապա ինչ որ ու-
նիմ՝ ան քեզի կու տամ . Նազով-
րեցի Յիսուս Քրիստոսին անու-
7 նովը ելի՛ր ու քալէ ։ Եւ անոր
աջ ձեռքէն բռնեց՝ վերցուց զանի-
կայ , ու իսկոյն անոր ոտքին թա-
8 թերը ու կոճերը զօրացան ։ Եւ
վեր ցատկելով՝ կայնեցաւ , ու կը
քալէր . և անոնց հետ տաճարը
մտաւ , քալելով՝ ու ցատկելով՝ և
9 զԱստուած օրհնելով ։ Ու բոլոր
ժողովուրդը տեսաւ անիկայ , որ
կը քալէր՝ ու կ'օրհնէր զԱստուած .
10 Եւ կը ճանչնային թէ անիկայ էր ,

Սաղ. ծե. 17 ։ Գլ. բ. 46 ։ Գլ. ժդ. 7 ։ Յով. թ. 8 ։ Գլ. դ. 10 ։ Եսայ. լե. 6 ։ Գլ. դ. 16, 21 ։

որ ողորմութեան համար տաճարին
Գեղեցիկ կոչուած դրանը քով կը
նստէր . և զարմանքով ու ապշու-
թեամբ լեցուեցան անոր եղած բա-
նին համար ։
11 Եւ քանի որ անիկայ Պետրոսին
ու Յովհաննէսին յարեր էր , բոլոր
ժողովուրդը զարմացած մէկտեղ
վազեցին անոնց քովը ան սրահը
12 որ Սողոմոնինը կ'ըսուէր ։ Ա-
տեսնելով Պետրոս , պատասխան
տուաւ ժողովուրդին . Ո՛վ Իսրա-
յէլացի մարդիկ՝ ինչո՞ւ զարմացեր
էք ասոր վրայ , կամ ինչո՞ւ աչքեր-
նիդ տնկած մեզի կը նայիք , որպէս
թէ մենք մեր զօրութեամբը կամ
բարեպաշտութեամբը ասոր քալել
13 տուած ըլլանք ։ Աբրահամին ու
Իսահակին և Յակոբին Աստուածը՝
մեր հայրերուն Աստուածը փառա-
ւորեց իր Որդին Յիսուսը , զորն
որ դուք մատնեցիք , և ուրացաք
Պիղատոսին առջեւ՝ երբոր ինքը
14 վճռեց որ արձակէ ։ Բայց դուք
ան Սուրբը և Արդարը ուրացաք ,
ու խնդրեցիք որ մարդասպան մարդ
15 մը ձեզի շնորհուի . Եւ կենաց Ա-
ռաջնորդը սպաննեցիք , զոր զա-
նիկայ Աստուած մեռելներէն յա-
16 րուց , որուն մենք վկայ ենք . Եւ
անոր անուանը հաւատքով , անոր
անունը հաստատեց ասիկայ՝ որն
որ դուք կը տեսնէք ու գիտէք . և
ան հաւատքը որ անով է՝ աս ա-
ռողջութիւնը ասոր տուաւ ձեր
17 ամենուն առջևը ։ Եւ հիմա եղ-
բայրներ՝ գիտեմ որ չգիտնալով ը-
րիք , ինչպէս որ ձեր իշխաններն ալ ։
18 Բայց Աստուած ինչ որ առաջուց
իր բոլոր մարգարէներուն բերնովը
յայտներ էր Քրիստոսին չարչա-
րուելուն վրայով , այսպէս կատա-
19 րեց ։ Ուստի ապաշխարեցէ՛ք ու
դարձի՛ եկէք , որ մեղքերնիդ ջըն-
20 ջուի . Որպէս զի սփոփանաց ժա-
մանակները գան Տէրոջը երեսէն .
և առաջուց ձեզի համար սահմա-
նուած Յիսուս Քրիստոսը ղրկէ ։
21 Որ զանիկայ պէտք է որ երկինքը
ընդունի մինչև ան ատենները՝ որ
ամէն բաները կարգադրուին , ո-
րոնց համար Աստուած սկիզբէն 'ի
վեր իր սուրբ մարգարէներուն բեր-
22 նովը խօսած է ։ Մովսէս մեր հայ-
րերուն ըսաւ թէ՝ Ձեր Տէր Ա-
ստուածը ձեր եղբայրներէն ինծի
պէս մարգարէ մը պիտի հանէ ձեզի ,
անոր մտիկ ըրէք՝ ամէն ինչ որ ձե-
23 զի խօսի ։ Եւ պիտի ըլլայ թէ ա-
մէն ով որ ան մարգարէին մտիկ
չընէ , ժողովուրդին մէջէն պիտի
24 կորսուի ։ Ու բոլոր մարգարէները
որ Սամուէլէն 'ի վեր խօսեցան , աս

Ցամ Տեառն 33

Յով. թ. 8 ։ Որ անոր բժշկուած կաղը ։ Յով. ժ. 23 ։ Գլ. ե. 12 ։ Գլ. ե. 30 ։ Յով. ե. 39 ։ ժբ. 16 ։ ժէ. 1 ։ Կամ ծառան ։ Մատ. իէ. 2 ։ Մատ. իէ. 20 ։ Մար. ժե. 11 ։ Ղու. իգ. 18, 20, 21 ։ Յով. ժբ. 40 ։ ժթ. 15 ։ Գլ. ժգ. 28 ։ Սաղ. ժզ. 10 ։ Մար. ա. 24 ։ Ղու. ա. 35 ։ Գլ. բ. 27 ։ դ. 27 ։ Գլ. է. 52 ։ իբ. 14 ։ Գլ. բ. 24 ։ Գլ. բ. 32 ։ Մատ. թ. 22 ։ Գլ. դ. 10 ։ ժդ. 8 ։ Ղու. իգ. 34 ։ Յով. ժզ. 8 ։ Գլ. ժգ. 27 ։ ա Կոր. բ. 8 ։ ա Տիմ. ա. 13 ։ Ղու. իդ. 44 ։ Գլ. իգ. 22 ։ Սաղ. իբ. Եւ. ծ. 6 ։ ծզ. 5 ։ Դան. թ. 26 ։ Զաքար. 10, 11 ։ Գլ. բ. 38 ։ Գլ. ա. 11 ։ Մատ. ժէ. 11 ։ Ղու. ա. 70 ։ Բ Օր. ժը. 15, 18, 19 ։ Գլ. է. 37 ։

Յամի Տեառն 33

Զ Գլ. բ. 39. Հռով. թ. 4. Տ. Ժե. 8. Գաղ. գ. 26.
Է Ծն. ժբ. 3. ժը. 18. իբ. 18. իզ. 4. իը. 14. Գաղ. գ. 8.
Ը Մատ. ժ. 5. ժե. 24. Ղուկ. իդ. 47. Գլ. ժգ. 32. 33. 46.
Թ Հմ. 22.
Ժ Մատ. ա. 21.

օրերուս համար ալ իմացուցին ։
25 Զ Դուք էք այն մարգարէներուն որ-
դիքը՝ և այն ուխտին, որ Աստուած
մեր հայրերուն հետ ըրաւ, ու ըսաւ
Աբրահամին. Է Եւ քու սերունդովդ
պիտի օրհնուին երկրի բոլոր ազգե-
26 րը ։ Աստուած իր Որդին յարու-
ցանելով Ը առաջ ձեզի ղրկեց զա-
նիկայ որ ձեզ օրհնէ, Թ ամէն մէկեր-
նիդ ձեր չարութիւններէն դարձը-
նելով ։

## ԳԼ. Դ

1 Հրէից իշխանները Պետրոսին քարոզութեանը վրայ բարկանալով՝ կը բանտարկեն զանիկայ Յովհաննէսին հետ. 4 սակայն ամէնայնիւ Աստուծոյ խօսքը լսողներէն հազարաւոր անձինք դարձի կու գան ։ 5 Ետքը երբոր իշխանները զանոնք դատաստանի կը հանեն, Պետրոս համարձակ կը հաստատէ թէ այն կաղը Յիսուսի անունովը բժշկուեցաւ, և թէ միայն նոյն Յիսուսին անունովը կրնանք փրկուիլ. 13 բայց իշխանները սպառնալիքներով կը պատուիրեն Պետրոսին ու Յովհաննէսին որ մէյմըն ալ այն անունով չքարոզեն. 23 ասոր վրայ եկեղեցւոյ անդամները աղօթքի կը պարապին. 31 և Աստուած շարժելով անոնց գտնուած տեղը, վկայութիւն կու տայ թէ անոնց աղօթքը լսած է, ու կը հաստատէ եկեղեցին՝ Սուրբ Հոգիին շնորհքը և միաբանական սէր պարգևելով անոր ։

Ա Մատ. իբ. 23. Գլ. իգ. 8.
Բ Ղուկ. գ. 2. Յովհ. ժա. 49. ժը. 13.
Գ Ել. բ. 14. Մատ. իա. 23. Գլ. է. 27.
Դ Ղուկ. ժբ. 11. 12.
Ե Գլ. գ. 6. 16.
Զ Գլ. բ. 24.

1 Եւ երբոր անոնք ժողովուրդին կը
խօսէին, քահանաները ու տա-
ճարին իշխանը՝ և սադուկեցիները
2 անոնց վրայ հասան, Ա Դժուարե-
լով՝ որ անոնք ժողովուրդին կը սոր-
վեցընէին, և Յիսուսի միջոցովը մե-
ռելներէն յարութիւն առնելը կը
3 քարոզէին ։ Ու ձեռք զարկին ա-
նոնց, և բանտը դրին զանոնք մինչև
հետևեալ օրը ։ Ինչու որ ալ իրի-
4 կուն էր ։ Բայց այն խօսքը լսողնե-
րէն շատերը հաւատացին, ու մար-
դոց թիւը հինգ հազարի չափ եղաւ ։
5 Ու եղաւ որ հետևեալ օրը մէկ-
տեղ ժողվուեցան անոնց իշխաննե-
րը և ծերերը ու դպիրները Երու-
6 սաղէմի մէջ. Բ Նաև Աննա քահա-
նայապետը՝ ու Կայիափան՝ և Յով-
հաննէսը՝ ու Աղեքսանդրոսը, և այն
ամէնը որ քահանայապետի ցեղէ
7 էին ։ Եւ զանոնք մէջտեղը կայ-
նեցուցած՝ կը հարցընէին. Գ Ի՞նչ
զօրութիւնով կամ ի՞նչ անունով
8 ըրիք դուք աս բանը ։ Դ Այն ատենը
Պետրոս Հոգւով Սրբով լեցուած
ըսաւ անոնց. Ո՛վ ժողովուրդին
իշխանները և Իսրայէլի ծերերը.
9 Թէ որ մենք այսօր տկար մարդու
մը եղած բարիքին համար կը քըն-
նուինք, թէ ինչ միջոցով անիկայ
10 բժշկուեցաւ, Յայտնի ըլլայ ձեզի
ամէնքնուդ, ու բոլոր Իսրայէլի
ժողովուրդին, Ե որ Նազովրեցի
Յիսուս Քրիստոսի անունովը՝ որն
որ դուք խաչեցիք, և զորն որ Աս-
տուած մեռելներէն յարուց, ահա
անով ասիկայ ձեր առջևը բժըշ-
11 կուած կեցեր է ։ Զ Անիկայ է այն
քարը՝ ձեզմէ շինողներէդ անար-
գուած, որ անկիւնի գլուխ եղաւ ։
12 Է Ու ուրիշ մէկով մը փրկութիւն
չկայ. ինչու որ անկէ 'ի զատ ու-
րիշ անուն մը չկայ երկինքին տա-
կը մարդոց մէջ տրուած, որ անով
13 կարող ըլլանք փրկուելու ։ Իսկ
անոնք Պետրոսին ու Յովհաննէսին
համարձակութեանը նայելով, Ը և
հասկընալով որ տգէտ ու առանց
ուսման մարդիկ են, կը զարմանա-
յին. և իմացան որ անոնք Յիսու-
14 սին հետն էին ։ Ու այն բժշկուած
մարդը տեսնելով՝ որ Թ անոնց հետ
կայներ էր, չէին կրնար անոնց դէմ
15 բան մը խօսիլ ։ Նաև հրամայելով
անոնց՝ որ ատեանէն դուրս ելլեն,
16 իրարու հետ խորհուրդ ըրին, Եւ
ըսին. Ժ Ի՞նչ ընենք աս մարդոցը.
ինչու որ ԺԱ Երուսաղէմի բոլոր բը-
նակիչներուն յայտնի է թէ ասոնց
ձեռքովը երևելի հրաշք մը եղաւ,
ու մենք չենք կրնար ուրանալ ։
17 Միայն թէ ժողովուրդին մէջը ալ
աւելի չտարածուելու համար՝ սաս-
տիկ սպառնալիք ընենք անոնց, որ
այն անունով մէյմըն ալ չըլլայ որ
18 մարդու բան խօսին ։ ԺԲ Եւ զա-
նոնք կանչելով պատուիրեցին ա-
նոնց՝ որ ամենևին չխօսին և չսոր-
19 վեցընեն Յիսուսի անունովը ։ Բայց
Պետրոս ու Յովհաննէս պատաս-
խան տուին անոնց՝ ու ըսին. ԺԳ Թէ
որ Աստուծոյ առջևը ուղիղ է որ
Աստուծմէ աւելի ձեզի մտիկ ը-
20 նենք, դո՛ւք դատեցէք ։ Վասն
զի մենք ԺԴ ան որ տեսանք ու լսե-
21 ցինք, ԺԵ չենք կրնար չխօսիլ ։ Իսկ
անոնք նորէն սպառնալիք ընելէն
ետև՝ արձակեցին զանոնք, բան մը
չգտնելով թէ ինչպէս պատժեն
զանոնք ԺԶ ժողովուրդին համար,
ինչու որ ամէնքն ալ զԱստուած
կը փառաւորէին եղած բանին հա-
22 մար ։ Վասն զի այն մարդը քառա-
սուն տարեկանէն աւելի էր, որուն
վրայ աս բժշկութեան հրաշքը ե-
ղաւ ։
23 Եւ անկէ արձակուելով՝ ԺԷ իրենց-
ներուն քովը եկան, ու պատմեցին
ինչ որ քահանայապետները և ծե-
24 րերը իրենց ըսին ։ Անոնք ալ երբ-
որ լսեցին, միաբանութեամբ ձայ-
ներնին Աստուծոյ վերցուցին՝ ըսե-
լով. ԺԸ Ո՛վ Տէր, դուն ես այն Աս-
տուածը՝ որ երկինքը ու երկիրը և
ծովը ու բոլոր անոնց մէջ եղած-
25 ները ստեղծեցիր, Որ քու ծառա-
յիդ Դաւիթին բերնովը խօսե-
ցար. ԺԹ Ինչո՞ւ հեթանոսները խռո-
վութիւն ըրին, ու ժողովուրդնե-

Յամի Տեառն 33

Է Սաղ. ճժը. 22. Ես. իը. 16. Մատ. իա. 42.
Ը Մատ. ա. 21. Գլ. ժ. 43. Ա Տիմ. բ. 5. 6.
Թ Մատ. ժա. 25. Ա Կոր. ա. 27.
Ժ Գլ. գ. 11.
ԺԱ Յովհ. ժա. 47.
ԺԲ Գլ. գ. 9. 10.
ԺԳ Գլ. ե. 40.
ԺԴ Գլ. ե. 29.
ԺԵ Գլ. իբ. 15. Ա Յովհ. ա. 1. 3.
ԺԶ Գլ. ա. 8. բ. 32.
ԺԷ Մատ. իա. 26. Ղուկ. ի. 6. 19. իբ. 2. Գլ. ե. 26.
ԺԸ Գլ. գ. 7. 8.
ԺԹ Գլ. ժբ. 12.
Ի Դ Թագ. ժթ. 15.
ԻԱ Սաղ. բ. 1.

րը պարապ բաներ մտածեցին .
26 Երկրի թագաւորները պատրաստ
կայնեցան , և իշխանները մէկտեղ
ժողվուեցան Տէրոջը դէմ՝ և անոր
27 Օծեալին դէմ ։ ն Արդարև աս
քաղաքիս մէջ ժողվուեցան նքու
սուրբ Որդւոյդ Յիսուսին վրայ՝
ո որն որ դուն օծեցիր , Հերովդէսը՝
և Պոնտացի Պիղատոսը ազգերուն
հետ՝ ու Իսրայէլի ժողովուրդնե-
28 րուն հետ , չ ընել՝ ինչ որ քու
ձեռքդ և խորհուրդդ սահմանեց
29 առաջուց՝ որ ըլլայ ։ Եւ հիմա
ով Տէր՝ նայէ անոնց սպառնալիք-
ներուն , ու շնորհէ քու ծառանե-
րուդ պ որ բոլոր համարձակութիւ-
30 նով քու խօսքդ խօսինք , Քու
ձեռքդ երկնցընելով բժշկելու ,
և ջ քու սուրբ Որդւոյդ Յիսուսին
ռ անունովը ս նշաններ ու հրաշքներ
31 ըլլալու ։ Ու երբոր անոնք աղօթք
ըրին , շարժեցաւ վ այն տեղը՝ ուր որ
ժողվուած էին , և ամէնքը Հո-
գւով Սրբով լեցուեցան , տ ու Աս-
տուծոյ խօսքը համարձակ կը խօ-
սէին ։
32 Եւ հաւատացեալներուն բազ-
մութիւնը ր մէկ սիրտ ու մէկ հոգի
ունէին . ց և անոնցմէ մէկը չէր ըսեր
իր ստացուածներէն մէկուն հա-
մար՝ թէ իրն է , հապա իրենց ամէն
բաները հասարակաց կը սեպէին ։
33 ւ Եւ մեծ զօրութիւնով առաքեալ-
ները փ վկայութիւն կու տային Տէր
Յիսուսին յարութեանը , ք և անոնց
ամէնուն վրայ մեծ շնորհք կար ։
34 Ու անոնց մէջ կարօտութիւն քա-
շող մը չկար . օ վասն զի անոնք որ
ագարակներու կամ տուներու տէր
էին , կը ծախէին , և ծախուածնե-
35 րուն գիները կը բերէին ֆ ու ա-
ռաքելոց ոտքը կը դնէին . ա և ամէն
մէկուն իր կարօտութեանը նայե-
36 լով կը բաժնուէր ։ Եւ Յովսէս որ
առաքեալներէն Բառնաբաս մակ-
անուանեցաւ , (որ կը թարգմա-
նուի՝ Մխիթարութեան որդի , )
Ղևտացի , ծննդեամբ Կիպրացի ,
37 բ Ագարակ մը ունենալով՝ ծախեց ,
ու ստակը բերաւ առաքելոց ոտքը
դրաւ ։

Ցամ Տեառն 33
ն Մատ. ԻԶ. 3. Ղու. ԻԲ. 2. ԻԳ. 1. 8.
շ Ղու. Ա. 35.
ո Ղու. Դ. 18. Յոհ. Ժ. 36.
չ Գւ. Բ. 23. Դ. 18.
պ Հմր 13. 31. Գւ. Թ. 27. ԺԴ. 46. ԺԴ. 3. ԺԹ. 8. ԻԴ. 26. ԻԸ. 32. Եփե. Զ. 19.
ջ Հմր 27.
ռ Գւ. Դ. 6. 13.
ս Գւ. Բ. 43. Ե. 12.
վ Գւ. Բ. 2. 4. ԺԴ. 26.
տ Հմր 29.
ր Գւ. Ե. 12. Հռով. ԺԵ. 5. 6. Բ Կոր. ԺԴ. 11. Փիլ. Ա. 27. Բ. 2. Ա Պետ. Գ. 8.
ց Գւ. Բ. 44.
ւ Գւ. Ա. 8.
փ Գւ. Ա. 22.
ք Գւ. Բ. 47.
օ Գւ. Բ. 45.
ֆ Հմր 37. Գւ. Ե. 2.
ա Գւ. Բ. 45. Զ. 1.
բ Հմր 34. 35. Գւ. Ե. 1. 2.

## ԳԼ . Ե

Անանիա ու իր կնիկը Սափիրա իրենց կեղծաւորութեանը համար Պետրոսէն յանդիմանուելով՝ կը մեռնին , 12 Առաքելոց շատ հրաշքներ ընելովը՝ 14 հաւատացեալները կը շատնան . 17 յետոյ առաքեալները վերստին բանտը կը դրուին , 19 բայց Տէրոջը հրեշտակը ազատելով զանոնք՝ կը պատուիրէ որ համարձակ քարոզեն ամէնուն ։ 21 Ուստի անոնք սորվեցընելով՝ թէ՝ տաճարին մէջ՝ 29 և թէ ատեանին առջևը , 33 սպաննուելու վտանգի մէջ կ'իյնան , բայց Գամաղիելին խրատովը ողջ կը մնան , 40 միայն ծեծ կ'ուտեն , որուն համար փառք կու տան Աստուծոյ , և ամէն օր չեն դադրիր քարոզելէն ։

1 Բայց մէկ մարդ մը Անանիա ա-
նունով իր կնկանը Սափիրային
հետ մէկտեղ ստացուածք մը ծա-
2 խեց . Եւ անոր գինէն խռռեց , որ
կնիկն ալ գիտէր , ա ու մէկ բաժինը
բերաւ առաքելոց ոտքը դրաւ ։
3 բ Եւ Պետրոս ըսաւ . Անանիա՛ ին-
չո՞ւ գ Սատանան քու սիրտդ լեցուց,
որ դուն Հոգւոյն Սրբոյ սուտ խօ-
սիս , ու ագարակին գինէն խռռես .
4 Չէ՞ որ քուկդ էր ան՝ քանի որ
կեցեր էր , ու ծախուած ալ՝ քու
իշխանութեանդ տակն էր . ատ
ի՞նչ է՝ որ քու սրտիդ մէջ աս
բանը դրիր . չէ՛ թէ մարդոց սուտ
5 խօսեցար , հապա Աստուծոյ ։ Եւ
Անանիա աս խօսքերը լսելով՝ դ ին-
կաւ , ու հոգի տուաւ . և մեծ վախ
ինկաւ ամէնուն վրայ՝ որ աս լսեցին ։
6 Ու երիտասարդները ելան , ու
ե պատնեցին անիկայ , և դուրս հա-
7 նելով թաղեցին ։ Ու երբոր իրեք
ժամու չափ վրան անցաւ , անոր
կնիկը չգիտնալով՝ ինչ որ եղեր
8 էր , ներս մտաւ . Եւ Պետրոս ըսաւ
անոր . Ըսէ ինծի , ագարակը ա՞յն-
չափ գնով ծախեցիք . ան ալ ը-
9 սաւ . Այո՛ , այնչափ ։ Ու Պետ-
րոս ըսաւ անոր . Ատ ի՞նչ է՝ որ
դուք միաբանեցաք զ Տէրոջը Հոգին
փորձելու . ահա քու էրկդ թա-
ղողներուն ոտքերը դրանը քովն
են , քեզ ալ դուրս պիտի հանեն ։
10 է Եւ իսկոյն անոր ոտքերուն քովը
ինկաւ , ու հոգի տուաւ . և երի-
տասարդները ներս մտնելով անի-
կայ մեռած գտան , ու հանեցին
11 իր էրկանը քովը թաղեցին ։ ը Եւ
մեծ վախ մը ինկաւ բոլոր եկեղե-
ցիին վրայ՝ ու ամէնուն վրայ՝ որ աս
բաները լսեցին ։
12 թ Եւ առաքեալներուն ձեռքովը
շատ նշաններ ու հրաշքներ կ'ըլլա-
յին ժողովուրդին մէջ . ժ և ամէնը
միաբանութեամբ Սողոմոնի սրահին
13 մէջն էին ։ ի Եւ ուրիշներէն մէկը
չէր համարձակեր անոնց յարելու .
լ հապա ժողովուրդը կը մեծարէր
14 անոնք . Եւ Տէրոջը հաւատացող-
ները ալ աւելի կը շատնային , բազ-
մութիւն էրիկ մարդոց ու կնիկ-
15 ներու . Անանկ որ հիւանդները
հրապարակները կը հանէին , և պատ-
գարակներով ու մահիճներով կը
դնէին , խ որ Պետրոսին անցնելու
ատենը՝ գոնէ անոր շուքը անոնց
16 մէկուն վրայ հասնի ։ Ու շրջակայ
քաղաքներուն բազմութիւնը Ե-
րուսաղէմ կը ժողվուէր , ծ հիւանդ-
ներ՝ և պիղծ ոգիներէ նեղութիւն
կրողներ բերելով , որոնք ամէնն ալ
կը բժշկուէին ։
17 կ Ոտք ելաւ քահանայապետը՝ և

Ցամ Տեառն 33
ա Գւ. Դ. 37.
բ Թու. Լ. 2. Բ Օր. ԻԳ. 21. Ժող. Ե. 4.
գ Ղու. ԻԲ. 3.
դ Հմր 10. 11.
ե Յոհ. ԺԹ. 40.
զ Հմր 8. Մատ. Դ. 7.
է Հմր 5.
ը Հմր 5. Գւ. Բ. 43. ԺԹ. 17.
թ Գւ. Բ. 43. ԺԴ. 3. ԺԹ. 11. Հռով. ԺԵ. 19. Բ Կոր. ԺԲ. 12. Եբր. Բ. 4.
ժ Գւ. Գ. 11. Դ. 32.
ի Յոհ. Թ. 22. ԺԲ. 42. ԺԹ. 38.
լ Գւ. Բ. 47. Դ. 21.
խ Մատ. Թ. 21. ԺԴ. 36. Գւ. ԺԹ. 12.
ծ Մար. ԺԶ. 17. 18. Յոհ. ԺԴ. 12.
կ Գւ. Դ. 1. 2. 6.

Ցամ Տեառն 33

բոլոր իր հետը եղողները, որոնք
սադուկեցւոց աղանդէն էին՝ նա-
18 խանձով լեցուած. Ու առաքեալ-
ներուն ձեռք զարկին, և հասարա-
19 կաց բանտը դրին զանոնք: Բայց
Տէրոջը հրեշտակը գիշերով բան-
տին դռները բացաւ, ու դուրս
20 հանելով զանոնք՝ ըսաւ. Գացէք
և տաճարին մէջը կայնելով՝ ժողո-
վուրդին խօսեցէք աս կենաց բո-
21 լոր խօսքերը: Ու երբոր ասոնք լսեցին,
տաճարը մտան առտուանց, և կը
սորվեցնէին. իսկ քահանայապե-
տը եկաւ ու իր հետը եղողները՝
ու մէկտեղ կանչեցին ժողովքը, ու
Իսրայէլի որդւոցը բոլոր ծերակոյ-
տը. և մարդ խրկեցին բանտը՝ որ
22 զանոնք բերեն: Ու երբոր սպա-
սաւորները գացին, զանոնք բան-
տին մէջ չգտնելով՝ ետ դարձան
23 պատմեցին, Ու ըսին թէ՝ Բան-
տը ամէն զգուշութիւնով գո-
ցուած գտանք, ու պահապանները
դռներուն առջևը կայնած, բայց
բանալով՝ ներսը մարդ չգտանք:
24 Ու երբոր մեծ քահանան, և տա-
ճարին իշխանը ու քահանայապետ-
ները լսեցին աս խօսքերը, կը զար-
մանային անոնց համար՝ թէ ինչ
25 պիտի ըլլայ ան: Եւ մէկը եկաւ
պատմեց անոնց թէ, Ահա ան մար-
դիկը որ բանտը դրիք, տաճա-
րը կայներ են՝ և ժողովուրդին
26 կը սորվեցնեն: Ան ատենը իշ-
խանը սպասաւորներովը մէկտեղ
գնաց զանոնք բերաւ՝ առանց բռ-
նութեան, քանզի ժողովուրդէն
կը վախնային որ չքարկոծուին:
27 Ու բերին զանոնք ատեանը կայնե-
ցուցին. և քահանայապետը ա-
28 նոնց հարցուց, Ըսելով. Չէ՞ որ
սաստիկ պատուիրեցինք ձեզի, որ
աս անունով չսորվեցնէք. և ահա
Երուսաղէմը ձեր ուսմունքովը լե-
ցուցիք, և ան մարդուն արիւնը
կ'ուզէք մեր վրայ բերել:
29 Պատասխան տուաւ Պետրոս և
միւս առաքեալները՝ ու ըսին. Ա-
ռաւել Աստուծոյ հնազանդիլ պէտք
30 է՝ քան թէ մարդոց: Մեր հայրե-
րուն Աստուածը Յիսուսը յարոյց,
զորն որ դուք փայտէն կախելով ըս-
31 պաննեցիք: Անիկայ Աստուած իր
աջ ձեռքովը Առաջնորդ ու Փրկիչ
ըլլալու բարձրացուց, Իսրայէլին
ապաշխարութիւն և մեղաց թողու-
32 թիւն տալու: Եւ մենք աս բա-
ներուս համար անոր վկաներ ենք,
ու Սուրբ Հոգին ալ՝ զորն որ Աս-
տուած իրեն հնազանդ եղողներուն
33 տուաւ: Եւ անոնք ասոնք լսելով՝
խիստ կատղեցան, ու կը խորհէին
որ զանոնք մեռցնեն:
34 Եւ ատեանին մէջ փարիսեցի մը
ոտքի վրայ ելաւ՝ որուն անունը
Գամաղիէլ էր, օրինաց վարդապետ
մը՝ բոլոր ժողովուրդին առջևը պա-
տուաւոր մէկը, ու հրաման ըրաւ
որ առաքեալները քիչ մը դուրս հա-
35 նեն: Եւ ըսաւ անոնց. Ով Իս-
րայէլացի մարդիկ՝ դուք ձեզի զգու-
շացէք աս մարդոցը համար թէ ինչ
36 պիտի ընէք. Քանզի աս օրերէս
առաջ Թևդաս ելաւ, իրեն հա-
մար ըսելով՝ թէ երևելի մէկ մըն է,
ու թուով չորս հարիւրի չափ մար-
դիկ իրեն յարեցան. որ ինքը ըս-
պաննուեցաւ, և ան ամէնը որ իրեն
հնազանդեր էին՝ ցրուեցան, ու ոչ-
37 ինչ եղան: Անոր ետևէն Յուդա
Գալիլեացին ելաւ աշխարհագիր ե-
ղած օրերը, և շատ ժողովուրդ իր
կողմը ձգեց. ինքն ալ կորսուե-
ցաւ, և ան ամէնը որ իրեն հնա-
38 զանդեր էին՝ ցիրուցան եղան: Եւ
հիմա ձեզի կ'ըսեմ. Աս մարդոցմէ
մէկդի կեցէք, ու թող տուէք
զանոնք, ինչու որ եթէ աս խոր-
հուրդը կամ գործը մարդոցմէ է,
39 պիտի քակուի. Հապա թէ որ
Աստուծմէ է, չէք կրնար ատիկայ
քակել, չըլլայ թէ Աստուծոյ դէմ
40 մարտնչող գտնուիք: Եւ անոնք
հաւանութիւն տուին անոր. ու
առաքեալները կանչելով՝ ծեծե-
ցին, և պատուիրելով որ մէյմը ալ
Յիսուսի անունովը չխօսին, արձա-
41 կեցին զանոնք: Անոնք ալ ժողով-
քին առջևէն գացին, ուրախանա-
լով որ Տէրոջը անուանը համար
42 արժանի եղան անարգուելու: Եւ
ամէն օր տաճարը ու տուներուն
մէջ չէին դադարեր սորվեցնելէն՝
ու Յիսուս Քրիստոսը քարոզելէն:

## ԳԼ. Զ

1 Առաքեալները ուզելով որ աղքատներուն կերակուրին հոգ տարուի, նաև փոյթ ունենալով որ իրենք Աստուծոյ խօսքը՝ հոգիին կերակուրը մատակարարեն, 3 սարկաւագութեան պաշտօնը կը յանձնեն եօթը ընտրուած մարդոց, 5 որոնց մէկն էր Ստեփաննոս՝ հաւատքով և Հոգւով Սրբով լեցուն. 12 որուն հետ վիճաբանողները չկրնալով պատասխան տալ՝ կը բռնեն զանիկայ, 13 և զրպարտութեամբ կ'ամբաստանեն իբրև հայհոյիչ օրինաց և տաճարին:

1 Ու ան օրերը աշակերտները որ
շատցան, Հելլենացւոց կող-
մէն տրտունջ մը եղաւ Եբրայեցւոց
դէմ. ինչու որ իրենց որբևարինե-
րը ամէն օրուան ողորմութեան մա-
տակարարութեան մէջ անտես կ'ըլ-
2 լային: Եւ տասներկուքը կան-
չեցին աշակերտներուն բազմու-
թիւնը՝ ու ըսին. Մեզի չվայլեր
Աստուծոյ խօսքը ձգել, ու սեղան-
3 ներու ծառայութիւն ընել: Ուստի

Ցամ Տեառն 33

Ղու. իա. 12: Գլ. ժբ. 7: ժզ. 26: Յօհ. գ. 69: ժէ. 3: ա Յօհ. ե. 11: Գլ. դ. 5, 6: Ղու. իբ. 4: Գլ. դ. 1: Մատ. իա. 26: Գլ. դ. 18: Մատ. իգ. 35: իէ. 25: Գլ. բ. 23, 36: գ. 15: է. 52: Գլ. դ. 19: Գլ. գ. 13, 15: իբ. 14: Գլ. ժ. 39: ժգ. 29: Գաղ. գ. 13: ա Պետ. բ. 24: Գլ. բ. 33, 36: Փիլ. բ. 9: Եբր. բ. 10: ժբ. 2: Գլ. գ. 15: Մատ. ա. 21: Ղու. իդ. 47: Գլ. գ. 26: ժգ. 38: Եփե. ա. 7: Կող. ա. 14: Յօհ. ժե. 26, 27: Գլ. բ. 4: ժ. 44: Գլ. բ. 37: է. 54:

Գլ. իբ. 3:

Փրկչին ամսու-րական թուականէն ի-րիք տարի ա-ռաջ:

Առակ. իա. 30: Եսայ. ը. 10: Մատ. ժե. 13: Ղու. իա. 15: ա Կոր. ա. 25: Գլ. է. 51: թ. 5: իգ. 9: Գլ. դ. 18: Մատ. ժ. 17: իգ. 34: Մար. ժգ. 9: Մատ. ե. 12: Հռով. ե. 3: բ Կոր. ժբ. 10: Փիլ. ա. 29: Եբր. ժ. 34: Յակ. ա. 2: ա Պետ. դ. 13, 16: Գլ. բ. 46: Գլ. դ. 20, 29:

Գլ. բ. 41: դ. 4: է. 14: Հմր. Գլ. թ. 29: Ա՛ Հելլենախօս Հրեից: Գլ. դ. 35: Ել. ժը. 17:

Յամ Տեառն 33

եղբայրներ՝ ձեզմէ եօթը հոգի
ընտրեցէք՝ բարի վկայուած Հոգւով
Սրբով և իմաստութիւնով լեցուն,
որ զանոնք աս գործիս վրայ դնենք.
4 Եւ մենք աղօթքի ու Աստուծոյ
5 խօսքին պաշտօնին պարապինք։ Եւ
աս խօսքը բոլոր բազմութեան առ-
ջևը հաճոյ երևցաւ. ու ընտրեցին
Ստեփաննոսը՝ հաւատքով և Հո-
գւով Սրբով լեցուն մարդ մը, ու
Փիլիպպոսը, և Պրոքորոնը, ու
Նիկանովրան, և Տիմոնան, ու
Պարմենան, և Նիկողայոս նորա-
6 հաւատ Անտիոքացին. Ասոնք ա-
ռաքեալներուն առջևը կայնեցու-
ցին. անոնք ալ աղօթք ընելով
ձեռքերնին անոնց վրայ դրին։
7 Եւ Աստուծոյ խօսքը կ'աճէր, ու
աշակերտներուն թիւը խիստ կը
շատնար Երուսաղէմի մէջ. Եւ
քահանաներէն մեծ բազմութիւն
հաւատքին կը հնազանդէին։
8 Եւ Ստեփաննոս՝ որ շնորհքով
ու զօրութիւնով լցուած մարդ մըն
էր, մեծ հրաշքներ և նշաններ կ'ը-
9 նէր ժողովուրդին մէջ։ Բայց ո-
մանք ան ժողովարանէն՝ որ Ազա-
տացելոց, և Կիւրենացւոց՝ ու
Աղեքսանդրացւոց ժողովարան կ'ը-
սուէր, և անոնք որ Կիլիկիայէն ու
Ասիայէն էին, ելան ու Ստեփան-
նոսին հետ վիճաբանութիւն կ'ը-
10 նէին. Եւ չէին կրնար դէմ դնել
ան իմաստութեանը ու հոգիին,
11 որով կը խօսէր։ Ան ատենը հրա-
պուրեցին քանի մը մարդիկ, որ
ըսեն թէ՝ Մենք լսեցինք որ ատիկայ
հայհոյական խօսքեր կը խօսի Մով-
12 սէսին ու Աստուծոյ դէմ։ Եւ
գրգռեցին ժողովուրդը՝ ու ծերերը՝
և դպիրները, ու վրան հասնելով
զինքը բռնեցին՝ ու ատեանը տարին։
13 Եւ սուտ վկաներ կայնեցուցին,
որոնք կ'ըսէին. Աս մարդը չդա-
դարիր հայհոյական բաներ խօսելէն
սուրբ տեղին և օրէնքին դէմ.
14 Քանզի լսեցինք ատկէ որ կ'ըսէր
թէ, Աս Նազովրեցի Յիսուսը պի-
տի քակէ աս տեղը, ու պիտի
փոխէ Մովսէսին մեզի աւանդած
15 սովորութիւնները։ Եւ ատեանը
նստողներուն ամէնը երբոր անոր
նայեցան, անոր երեսը հրեշտակի
երեսի պէս տեսան։

Ե Բ Օր. ա. 13. Գլ. ա. 21. Ժգ. 2. Ա Տիմ. գ. 7. — Զ Գլ. բ. 42. — Է Գլ. ժա. 24. — Ը Գլ. ը. 5. 26. իա. 8. — Թ Յայտ. բ. 6. 15. — Ժ Գլ. ա. 24. — Ի Գլ. ը. 17. թ. 17. ժգ. 3. Ա Տիմ. դ. 14. ե. 22. Բ Տիմ. ա. 6. — Լ Գլ. ժբ. 24. ժթ. 20. Կող. ա. 6. — Խ Յովհ. ժբ. 42. — Ծ Ղուկ. իա. 15. Գլ. ե. 39. Տես Ել. դ. 12. Ես. ծդ. 17. — Կ Գ Թագ. իա. 10. 13. Մատ. իզ. 59. 60. — Հ Գլ. իե. 8. Դան. թ. 26.

## ԳԼ. Է

1 Ստեփաննոս իրեն դէմ եղած ամբաստանութեանը պատասխան տալով, 2 կը ցուցնէ թէ ինչպէս Աստուած ընտրեր էր իրենց հայրերը. 37 և թէ Մովսէս վկայութիւն բրած էր Քրիստոսի համար. 51 կը յանդիմանէ Հրէաները որ ապստամբ գտնուելով Աստուծոյ դէմ, սպաննեցին զՔրիստոս՝ ան Արդարը՝ որուն համար մարգարէները կանխաձայներ էին. թէ աշխարհք պիտի գայ։ 54 Ասոր վրայ Հրէայք կը քարկոծեն Ստեփաննոսը, որ իր հոգին Յիսուսի յանձնելով՝ խոնարհութեամբ աղօթք կ'ընէ անոնց համար։

1 Ան ատենը քահանայապետը ըսաւ,
Իրաւցընէ՞ աս բաները ատանկ
2 են։ Եւ անիկայ ըսաւ. Մարդիկ
եղբայրներ ու հայրեր՝ մտիկ ըրէք.
Փառաց Աստուածը մեր հօրը Աբ-
րահամին երևցաւ, քանի որ Մի-
ջագետքի մէջ էր, դեռ Խառանի
մէջ չբնակած. և ըսաւ անոր.
3 Ելի՛ր քու երկրէդ և քու ազգա-
կաններէդ, ու եկուր ան երկիրը՝
4 որ ես քեզի պիտի ցուցնեմ։ Ան
ատենը Քաղդէացւոց երկրէն ելլե-
լով՝ Խառանի մէջ բնակեցաւ. և
անոր հօրը մեռնելէն ետև՝ անկէ
փոխադրեց զանիկայ աս երկիրը,
ուր որ դուք հիմա կը բնակիք։
5 Եւ ասոր մէջ անոր ժառանգու-
թիւն չտուաւ, ոչ ալ ոտքի քայլ
մը տեղ, բայց խոստացաւ որ անի-
կայ իրեն տայ իբրև կալուածք, և
իրմէ ետև իր սերունդին, երբոր
6 դեռ ինքը որդի չունէր։ Եւ Աս-
տուած այսպէս խօսեցաւ թէ՝ Ա-
նոր սերունդը օտար երկրի մէջ պան-
դուխտ պիտի ըլլայ. ու պիտի ծա-
ռայեցընեն անիկայ՝ և չարչարեն
7 չորս հարիւր տարի։ Եւ ան ազ-
գը՝ որուն պիտի ծառայեն, ես պի-
տի դատեմ, ըսաւ Աստուած, և
անկէ ետև պիտի ելլեն ու աս տեղս
8 ինծի պաշտեն։ Եւ անոր թլփա-
տութեան ուխտը տուաւ, ու
այսպէս Աբրահամ Իսահակը ծնաւ, և
թլփատեց զանիկայ ութերորդ
օրը. Իսահակն ալ՝ Յակոբը ծնաւ.
Յակոբն ալ տասուերկու նահա-
9 պետները։ Եւ նահապետները
Յովսէփին վրայ նախանձելով՝ Ե-
գիպտոս ծախեցին.
Բայց Աստուած անոր հետն էր.
10 Ու փրկեց զանիկայ իր ամէն նեղու-
թիւններէն, և անոր շնորհք ու
իմաստութիւն տուաւ Եգիպտոսի
Փարաւոն թագաւորին առջևը. ան
ալ զանիկայ իշխան դրաւ Եգիպ-
տոսի՝ ու իր բոլոր տանը վրայ։
11 Ու Եգիպտոսի և Քանանու բոլոր
երկրին վրայ սով մը եկաւ, ու մեծ
նեղութիւն, և մեր հայրերը ուտե-
12 լիք չէին գտներ։ Եւ Յակոբ
երբոր լսեց թէ Եգիպտոսի մէջ
ցորեն կը գտնուի, առջի անգամին
13 մեր հայրերը ղրկեց։ Եւ երկրորդ
անգամին Յովսէփ իր եղբայրներուն
ճանչցուց ինքզինքը. ու Յովսէփին
ազգը Փարաւոնին յայտնի եղաւ։
14 Եւ Յովսէփ ղրկեց՝ ու կանչեց իր
հայրը Յակոբը՝ ու բոլոր ազգա-
տոհմը, եօթանասունուհինգ հո-
15 գի։ Եւ Յակոբ Եգիպտոս իջաւ,

Յամ Տեառն 33

Ա Գլ. իբ. 1. — Բ Ծն. ժբ. 1. — Գ Ծն. ժա. 31. ժբ. 4. 5. — Դ Ծն. ժբ. 7. ժգ. 15. ժե. 3. 18. ժէ. 8. իզ. 3. — Ե Ծն. ժե. 13. 16. — Զ Ել. ժբ. 40. Գաղ. գ. 17. — Է Ել. գ. 12. — Ը Ծն. ժէ. 9. 10. 11. — Թ Ծն. իա. 2. 3. 4. — Ժ Ծն. իե. 26. — Ի Ծն. իթ. 31. 5. 15. 23. — Լ Ծն. լէ. 4. 11. 28. Սաղ. ճե. 17. — Խ Ծն. լթ. 2. 21. 23. — Ծ Ծն. խա. 37. խբ. 6. — Կ Ծն. խա. 54. — Հ Ծն. խբ. 1. — Ձ Ծն. խե. 4. 16. — Ղ Ծն. խե. 9. 27. — Ճ Ծն. խզ. 27. Բ Օր. ժ. 22. — Մ Ծն. խզ. 5.

յու մեռաւ, ինքը ու մեր հայրերը ։
16 Եւ Սիւքէմ տարուելով՝ նան գե-
րեզմանին մէջը դրուեցան, որն որ
Աբրահամ արծաթի գնով ծախու
առեր էր Սիւքեմի հօրը Եմովրի
17 որդիներէն ։ Ու երբոր մօտեցաւ
խոստմունքին ատենը, որ Աստուած
երդումով խոստացեր էր Աբրահա-
մին, ժողովուրդը աճեցաւ ու
18 շատցաւ Եգիպտոսի մէջ, Մինչև որ
ուրիշ թագաւոր մը ելաւ՝ որ Յով-
19 սէփը չէր ճանչնար ։ Անիկայ հը-
նարք բանեցուց մեր ազգին դէմ՝
ու չարչարեց մեր հայրերը, մինչև
անգամ անոնց տղաքը դուրս
20 ձգել տուաւ՝ որ չապրին ։ Այն
ժամանակը Մովսէս ալ ծնաւ, և
Աստուծոյ առջևը գեղեցիկ էր, որ
իր հօրը տունը մեծցաւ իրեք ամիս ։
21 Ու երբոր անիկայ դուրս ձգուե-
ցաւ, Փարաւոնին աղջիկը զանի-
կայ վերցուց, և իրեն իբրև որդի
22 մեծցուց ։ Ու Մովսէս՝ Եգիպտա-
ցւոց բոլոր իմաստութիւնովը վար-
ժուեցաւ, և զօրաւոր էր իր խօս-
23 քերովը ու գործքերովը ։ Ու
երբոր քառասուն տարեկան եղաւ,
իր սիրտը ինկաւ իր եղբայրներուն՝
Իսրայէլի որդւոցը այցելութիւն
24 ընել ։ Ու Իսրայէլացիներէն մէ-
կը հարստահարուած տեսնելով՝
պաշտպանեց, և զրկուածին վրէժը
առաւ՝ ան Եգիպտացին սպաննե-
25 լով ։ Կը կարծէր թէ իր եղբայր-
ները պիտի իմանային՝ որ Աս-
տուած իր ձեռքովը անոնց ազա-
տութիւն պիտի տար. բայց ա-
26 նոնք չիմացան ։ Ու հետևեալ օրը
անոնց դիմացը ելաւ՝ երբոր կը
կռուէին, և խաղաղութիւն ընելու
ստիպեց զանոնք, ըսելով. Մար-
դիկ՝ դուք եղբայրներ էք, ինչո՞ւ
27 մէկզմէկ կը զրկէք ։ Բայց ան որ
ընկերը կը զրկէր, մերժեց զանիկայ՝
ու ըսաւ. Ո՞վ քեզ մեր վրայ իշխան
28 ու դատաւոր դրաւ. Զի՞ս ալ սպան-
նել կ՚ուզես, ինչպէս որ երէկ Եգիպ-
29 տացին սպաննեցիր ։ Եւ Մով-
սէս աս խօսքին վրայ փախաւ, ու
Մադիամու երկրին մէջ պանդուխտ
եղաւ, ուր որ երկու որդի ծնաւ ։
30 Եւ քառասուն տարի անցնելէն ե-
տև՝ Սինայ լեռանը անապատին մէջ
Տէրոջը հրեշտակը երևցաւ անոր՝
31 մորենիի կրակի բոցով ։ Մովսէս
ալ երբոր տեսաւ՝ զարմացաւ ան
տեսիլքին վրայ. ու երբոր մօտեցաւ
զննելու, Տէրոջը ձայնը եկաւ ա-
32 նոր, որ կ՚ըսէր. Ես եմ քու հայ-
րերուդ Աստուածը, Աբրահամին
Աստուածը, ու Իսահակին Աս-
տուածը, և Յակոբին Աստուածը.
Մովսէս ալ դողալով՝ չէր
33 համարձակեր զննելու ։ Եւ Տէրը
ըսաւ անոր. Ոտքերուդ կօշիկները
հանէ, ինչու որ աս տեղը՝ որ դուն
34 կայներ ես, սուրբ երկիր է ։ Ի-
րաւ Եգիպտոսի մէջ եղող ժողո-
վուրդիս չարչարանքը տեսայ, ու
լսեցի անոնց հառաչանքը, և իջայ
զանոնք ազատելու. և հիմա եկուր
35 քեզ Եգիպտոս ղրկեմ ։ Այն Մով-
սէսը որ ուրացան՝ ու կ՚ըսէին. Ո՞վ
քեզ իշխան ու դատաւոր դրաւ,
Աստուած անիկայ իշխան և փրկիչ
ղրկեց ան հրեշտակին ձեռքովը՝
որ մորենիին մէջ անոր երևցաւ ։
36 Անիկայ հանեց զանոնք՝ հրաշքներ
ու նշաններ ընելով Եգիպտոսի
երկրին ու Կարմիր ծովուն մէջ,
և անապատին մէջ քառասուն տա-
37 րի ։ Աս Մովսէսն է՝ որ ըսաւ
Իսրայէլի որդւոցը. Ձեր Տէր Աս-
տուածը ձեր եղբայրներէն ինծի
պէս մարգարէ մը պիտի հանէ
38 ձեզի, անոր մտիկ ըրէք ։ Անի-
կայ ան է որ անապատը ժողովքին
մէջն էր, Սինայ լեռան վրայ իրեն
խօսող հրեշտակին հետ ու մեր
հայրերուն հետ. որ կենդանի
պատգամներ առաւ մեզի տալու.
39 Որուն մեր հայրերը չուզեցին հնա-
զանդ ըլլալ. հապա մերժեցին,
և իրենց սրտերովը Եգիպտոս դար-
40 ձան ։ Եւ ըսին Ահարոնին. Մեզի
աստուածներ շինէ՝ որ մեր առջևէն
երթան. քանզի ան Մովսէսը՝ որ
մեզ Եգիպտոսի երկրէն հանեց,
չենք գիտեր թէ ինչ եղաւ անոր ։
41 Եւ ան օրերը որթ մը շինեցին, ու
կուռքին զոհ մատուցին, և իրենց
ձեռացը գործքերովը կը զուարճա-
42 նային ։ Աստուած ալ ետ դար-
ձուց, ու թողուց զանոնք որ երկ-
նից զօրքը պաշտեն. ինչպէս որ
գրուած է մարգարէից գրքին մէջ,
Միթէ անապատին մէջ քառասուն
տարի զոհեր ու պատարագնե՞ր մա-
տուցիք ինծի՝ ով Իսրայէլի տունը.
43 Եւ Մողոքին վրանը առիք, ու ձեր
Հռեմփա աստուծոյն աստղը, ան
պատկերները որ շինեցիք՝ անոնց
երկրպագութիւն ընելու. և ես ալ
ձեզ Բաբիլոնէն անդին պիտի փո-
44 խադրեմ ։ Վկայութեան խորանը
անապատին մէջ մեր հայրերուն
հետն էր, ինչպէս որ Մովսէսին
հետ խօսողը հրաման ըրաւ՝ որ տե-
սած օրինակին պէս շինէ զանիկայ.
45 Որ մեր հայրերն ալ յաջորդաբար
առնելով՝ Յեսուին հետ բերին զա-
նիկայ ան ազգերուն կալուածքը,
որոնք Աստուած վռնտեց մեր հայ-
րերուն առջևէն մինչև Դաւիթին
46 օրերը, Որ Աստուծոյ առջևը շը-
նորհք գտաւ, և ուզեց որ Յակո-

Յամի Տեառն 33

Ծն. խթ. 33 ։ Ել. ա. 6 ։
Ել. ժգ. 19 ։ Յես. իդ. 32 ։
Ծն. իգ. 16 ։ լէ. 19 ։
Ծն. ժե. 13 ։ Հմր. 6 ։
Ել. ա. 7, Տ. 9 ։ Սաղ. ճե. 24, 25 ։
Ել. ա. 22 ։
Ել. բ. 2 ։
Եբր. ժա. 23 ։
Ել. բ. 3—10 ։
Ղու. իդ. 19 ։
Ել. բ. 11, 12 ։
Ել. բ. 13 ։
Տես Ղու. ժբ. 14 ։ Գէ. դ. 7 ։
Ել. բ. 15, 22 ։ դ. 20 ։ ժը. 3, 4 ։
Ել. գ. 2 ։
Մատ. իբ. 32 ։ Եբր. ժա. 16 ։

Յամի Տեառն 33

Ել. գ. 5 ։ Յես. ե. 15 ։
Ել. գ. 7 ։
Ել. ժդ. 19 ։ Թու. ի. 16 ։
Ել. ժբ. 41 ։ լգ. 1 ։
Ել. է. ը. թ. ժ. ժա. ժդ ։ Սաղ. ճե. 27 ։
Ել. ժդ. 21, 27, 28, 29 ։
Ել. ժզ. 1, 35 ։
Բ Օր. ժը. 15, 18 ։ Գէ. գ. 22 ։
Մատ. ժէ. 5 ։
Ել. ժթ. 3, 17 ։
Ես. կգ. 9 ։ Գաղ. գ. 19 ։ Եբր. բ. 2 ։
Ել. խա. 1 ։ բ Օր. ե. 27, 31 ։ լգ. 4 ։ Յոհ. ա. 17 ։
Հռով. գ. 2 ։
Ել. լբ. 1 ։
Բ Օր. թ. 16 ։ Սաղ. ճզ. 19 ։
Սաղ. ծա. 12 ։ Եզեկ. ի. 25, 39 ։ Հռով. ա. 24 ։ Բ Թես. բ. 10 ։
Բ Օր. դ. 19 ։ ժէ. 3 ։ Դ Թագ. ժէ. 16 ։ իա. 3 ։ Երեմ. ժթ. 13 ։
Ամով. ե. 25, 26 ։
Ել. իե. 40 ։ իզ. 30 ։ Եբր. ը. 5 ։
Յես. գ. 14 ։
Նեեմ. թ. 24 ։ Սաղ. խդ. 2 ։ ծը. 55 ։ Գէ. ժգ. 19 ։
Ա Թագ. ժզ. 1 ։ Բ Թագ. է. 1 ։ Սաղ. ձթ. 19 ։ Գէ. ժգ. 22 ։
Գ Թագ. ը. 17 ։ Ա Մն. իբ. 7 ։ Սաղ. ճլբ. 4, 5 ։

Յամի Տեառն 33

ն Գ Թագ. Զ. 1։ Ը. 20։ Ա Մն. ԺԷ. 12։ Բ Մն. Գ. 1։
շ Գ Թագ. Ը. 27։ Բ Մն. Բ. 6։ Զ. 18։ Գլ. ԺԷ. 24։
ո Ես. ԿԶ. 1, 2։ Մատ. Ե. 34. 35։ ԻԳ. 22։
չ Ել. ԼԲ. 9։ ԼԳ. 3։ Ես. ԽԸ. 4։
պ Ղև. ԻԶ. 41։ Բ Օր. Ժ. 16։ Երեմ. Դ. 4։ Զ. 10։ Թ. 26։ Եզեկ. ԽԴ. 9։
ջ Բ Մն. ԼԶ. 16։ Մատ. ԻԱ. 35։ ԻԳ. 34. 37։ Ա Թես. Բ. 15։
ռ Գլ. Գ. 14։
ս Ել. Ի. 1։ Գաղ. Գ. 19։ Եբր. Բ. 2։
վ Գլ. Ե. 33։

տ Գլ. Զ. 5։

ր Եզեկ. Ա. 1։ Մատ. Գ. 16։ Գլ. Ժ. 11։
ց Դան. Է. 13։
ւ Գ Թագ. ԻԱ. 13։ Ղուկ. Դ. 29։ Եբր. ԺԳ. 12։
փ Ղև. ԻԴ. 16։
ք Բ Օր. ԺԷ. 9, 10։ ԺԸ. 7։ Հմր 59։ Գլ. ԻԲ. 20։
օ Գլ. Թ. 14։
ֆ Սաղ. ԼԱ. 5։ Ղուկ. ԻԳ. 46։
ա Գլ. Թ. 40։ Ի. 36։ ԻԱ. 5։
բ Մատ. Ե. 44։ Ղուկ. Զ. 28։ ԻԳ. 34։
գ Հմր 57։ Գլ. ԻԲ. 20։

բին Աստուծոյն բնակարան մը գըտ-
47 նէ ։ ն Ու Սողոմոն անոր տուն մը
48 շինեց ։ շ Սակայն Բարձրեալը ձեռ-
քով շինուած տաճարներու մէջ
չբնակիր , ինչպէս որ մարգարէն
49 կ'ըսէ . ո Երկինքը իմ աթոռս է , ու
երկիրը իմ ոտքերուս պատուան-
դանն է . ինծի՞ տուն պիտի շի-
նէք ինծի , կ'ըսէ Տէրը . կամ ի՞նչ
պէտք բան իմ հանգստութեանս
50 տեղը . Չէ՞ որ աս ամէնը իմ ձեռքս
51 շիներ է ։ չ Ո՛վ խստապարանոցներ՝
ու պ սրտով և ականջով չթլփա-
տուածներ . դուք ամէն ատեն
Հոգւոյն Սրբոյ հակառակ կը կե-
նաք , ինչպէս ձեր հայրերը՝ անանկ
52 ալ դուք ։ ջ Մարգարէներէն ո՞րը
չհալածեցին ձեր հայրերը . ու ըս-
պաննեցին զանոնք՝ որ առաջուց
պատմեցին ան ռ Արդարին գալուն
համար , որ դուք հիմա անոր մատ-
նիչները և սպաննողները եղաք .
53 ս Դուք որ օրէնքը առիք հրեշտակ-
ներուն միջնորդութեամբը՝ ու
չպահեցիք ։
54 վ Եւ անոնք աս բաները լսելով՝
սրտերնուն մէջ կը կատղէին ու ակ-
ռաներնին անոր վրայ կը կճըցը-
55 նէին ։ Բայց անիկայ տ Հոգւով
Սրբով լեցուած՝ երկինքը նայեցաւ
և տեսաւ Աստուծոյ փառքը , ու
Յիսուսն ալ՝ որ Աստուծոյ աջ կող-
մը կայներ էր , և ըսաւ . ր Ահա կը
տեսնեմ երկինքը բացուած , ց ու
Որդին մարդոյ՝ Աստուծոյ աջ կող-
56 մը կայնած ։ Իսկ անոնք մեծաձայն
աղաղակելով՝ ականջներնին գոցե-
ցին , և ամէնը մէկէն վազեցին ա-
57 նոր վրայ . ւ Ու քաղաքէն դուրս
հանելով՝ փ կը քարկոծէին զանիկայ .
և ք վկաները իրենց հանդերձները
դրին կը դնէին երիտասարդի մը ոտ-
քերուն քովը , որ Սօղոս կ'ըսուէր ։
58 Եւ կը քարկոծէին Ստեփաննոսը ,
օ որ աղօթք կ'ընէր ու կ'ըսէր . Տէր
59 Յիսուս՝ ֆ ընդունէ՛ իմ հոգիս ։ Ու
ա ծնկան վրայ գալով՝ բարձրաձայն
աղաղակեց , բ Տէ՛ր՝ աս մեղքը մի՛
սեպեր ատոնց . և աս ըսելով՝ ննջե-
ջեց . գ Սօղոս ալ կամակից էր անոր
սպաննուելուն ։

ԳԼ. Ը

1 Երուսաղեմի հալածումը առիթ կ'ըլլայ՝ որ Սամարիայի մէջ եկեղեցի մը կը հաստատուի 5 Փիլիպպոսի ձեռօքը ։ որ քարոզեց՝ հրաշքներ բրաւ և շատերը մկրտեց , որոնց մէջն էր Սիմոն մոգը ։ 14 Պետրոս ու Յովհաննէս հոն կ'երթան եկեղեցիին հաստատութիւն տալու , ու աղօթքով և ձեռքերնին ժողովրդոց վրայ դնելով՝ Սուրբ Հոգին կը տրուի անոնց ։ 18 Երբոր Սիմոն կ'ուզէ ստակով ծախու առնել իրենց ունեցած իշխանութիւնը . 20 Պետրոս սաստիկ կը յանդիմանէ անոր սրտին չարութիւնը , ու զղջալու կը յորդորէ . ետքը Յովհաննէսին հետ Աստուծոյ խօսքը քարոզելով Երուսաղէմ կը դառնայ ։ 26 Տէրոջը հրեշտակը կը խրկէ Փիլիպպոսը՝ որ երթայ քարոզէ Եթեովպացի ներքինիին , և մկրտէ զանիկայ ։

Յամի Տեառն 34

ա Գլ. ԺԱ. 19։

ե Ծն. ԻԳ. 2։ Ծ. 10։ Բ Թագ. Գ. 31։
զ Գլ. Է. 57։ Թ. 1, 13, 21։ ԻԲ. 4։ ԻԶ. 10, 11։ Ա Կոր. ԺԵ. 9։ Գաղ. Ա. 13։ Փիլ. Գ. 6։ Ա Տիմ. Ա. 13։
է Մատ. Ժ. 23։ Գլ. ԺԱ. 19։
ը Գլ. Զ. 5։
թ Մար. ԺԶ. 17։

ի Գլ. ԺԳ. 6։
լ Գլ. Ե. 36։

խ Գլ. Ա. 8։

ծ Գլ. Բ. 38։
կ Գլ. ԺԹ. 2։
հ Գլ. Ժ. 48։ ԺԹ. 5։
ձ Մատ. ԻԸ. 19։ Գլ. Բ. 38։
ղ Գլ. Զ. 6։ ԺԹ. 6։ Եբր. Զ. 2։

1 Ու ան օրը մեծ հալածում եղաւ
Երուսաղեմի մէջ եղող եկեղե-
ցիին վրայ , ա և առաքեալներէն 'ի
զատ՝ ամէնն ալ ցիրուցան եղան
Հրէաստանի ու Սամարիայի եր-
2 կիրներուն մէջ ։ Եւ աստուածա-
վախ մարդիկ Ստեփաննոսը վերցու-
ցին , ե ու անոր վրայ մեծ ողբ ըրին ։
3 Բայց Սօղոս զ եկեղեցիին շատ վնաս
կու տար , տուները կը մտնէր , ե-
րիկ ու կնիկ մարդիկները կը քաշէր՝
բանտը դնել կու տար ։
4 է Եւ ան ցիրուցան եղածները կը
պտըտէին՝ ու խօսքը կը քարոզէին ։
5 ը Փիլիպպոս ալ Սամարիայի մէկ քա-
ղաքը իջնելով՝ Քրիստոսը կը քա-
6 րոզէր անոնց ։ Եւ ժողովուրդները
միաբան հաւանութեամբ Փիլիպ-
պոսին ըսածներուն ուշադրութիւն
կու տային՝ լսելով ու տեսնելով ան
7 նշանները որ կ'ընէր ։ թ Վասն զի
շատ դիւահարներէն պիղծ ոգիները
մեծաձայն աղաղակելով՝ կ'ելլէին ։
8 Եւ շատ անդամալոյծներ ու կաղեր
9 կը բժշկուէին . Ու մեծ ուրախու-
թիւն եղաւ ան քաղաքին մէջը ։
Բայց Սիմոն անունով մարդ մը
կար՝ որ առաջուց ան քաղաքին մէջ
ի մոգութիւն կ'ընէր , ու Սամարա-
ցւոց ազգը կը զարմացընէր , լ իրեն
համար ըսելով՝ թէ մեծ մէկ մըն է .
10 Որ անոր ուշադրութիւն կու տային
ամէնն ալ պզտիկէն մինչև մեծը ,
և կ'ըսէին . Ասիկայ Աստուծոյ մեծ
11 ըսուած զօրութիւնն է ։ Շատ
ժամանակէ 'ի վեր կախարդութիւն-
ներով անոնք զարմացընելուն հա-
մար՝ իրեն ուշադրութիւն կու տա-
12 յին ։ Բայց երբոր Փիլիպպոսին
հաւատացին՝ խ որ Աստուծոյ թա-
գաւորութեանը ու Յիսուս Քրիս-
տոսի անուանը վրայով կը քարո-
զէր , կը մկրտուէին թէ էրիկ մար-
13 դիկ և թէ կնիկ մարդիկ ։ Եւ
Սիմոն ինքն ալ հաւատաց , ու
մկրտուելով միշտ Փիլիպպոսին
հետն էր . և տեսնելով ան նշան-
ները , ու մեծ զօրութիւնները որ
14 կ'ըլլային , կը զարմանար ։ Իսկ
Երուսաղեմի մէջ եղող առաքեալ-
ները երբոր լսեցին թէ Սամարացիք
Աստուծոյ խօսքը ընդուներ են ,
Պետրոսը ու Յովհաննէսը անոնց
15 խրկեցին . Որոնք իջնելով՝ աղօթք
ըրին անոնց համար ծ որ Սուրբ Հո-
16 գին առնեն . ( կ Ինչու որ դեռ
անոնց մէկուն վրայ իջած չէր ,
հապա միայն հ Տէր Յիսուսի անու-
17 նովը ձ մկրտուած էին . ) ղ Ան ա-

Յամի Տեառն 34

տէնք ձեռքերնին դրին անոնց վրայ ,
18 ու Սուրբ Հոգին կ՚առնէին ։ Երբոր
տեսաւ Սիմոն թէ առաքեալները
անոնց վրայ ձեռք դնելով՝ Սուրբ
Հոգին կը տրուի , անոնց ստակ
19 մատուց ու ըսաւ . Ինծի ալ աս
իշխանութիւնը տուէք՝ որպէս զի
որու վրայ ձեռք դնեմ , անիկայ
20 Սուրբ Հոգին առնէ . Բայց Պետ-
րոս ըսաւ անոր . Քու սրծաթդ
քեզի հետ թող կորսուի . ինչու
որ աԱստուծոյ պարգեւը կարծեցիր
21 թէ բստակով կ՚առնուի ։ Դուն
աս բանին մէջ մասն ու բաժին
չունիս . ինչու որ քու սիրտդ Աս-
22 տուծոյ առջեւը շիտակ չէ ։ Ուս-
տի աս քու չարութենէդ զեղջի՛
եկուր , ու Աստուծոյ աղաչէ՛ .
գգուցէ ներուի քեզի քու սրտիդ
23 աս խորհուրդը ։ Ինչու որ ես քեզ
դմաղձի դառնութեան մէջ , եւ անի-
րաւութեան կապին մէջ կը տես-
24 նեմ ։ Սիմոն պատասխան տուաւ
ու ըսաւ . եԴուք ինծի համար ա-
ղօթք ըրէք Տէրոջը , որ ատ ձեր
ըսածներէն բան մը իմ վրաս չգայ ։
25 Անոնք ալ վկայութիւն տալով՝ Աս-
տուծոյ խօսքը խօսելէն ետեւ , դար-
ձան Երուսաղէմ . եւ Սամարացւոց
շատ գեղերուն մէջ աւետարանը
քարոզեցին ։
26 Եւ Տէրոջը հրեշտակը Փիլիպ-
պոսին խօսեցաւ՝ ըսելով . Ելի՛ր ու
դնա դուն հարաւային կողմը՝ ան
ճամբան , որ Երուսաղէմէն դէպ ՚ի
Գազա կ՚իջնէ , որ անապատ տեղ
27 մըն է ։ Ան ալ ելաւ գնաց . եւ ահա
զԵթէովպացի ներքինի մարդ մը՝
Եթէովպացւոց Կանդակա թա-
գուհիին մէկ զօրաւորը , որ ինքը
անոր բոլոր գանձերուն վրայ էր , որ
էԵրուսաղէմ եկեր էր երկրպագու-
28 թիւն ընելու . Եւ անկէ ետ կը
դառնար . ու իր կառքը նստած՝
Եսայի մարգարէին գիրքը կը կար-
29 դար ։ Եւ Հոգին ըսաւ Փիլիպ-
պոսին . Մօտեցի՛ր , եւ ատ կառքին
30 քովը գնա ։ Փիլիպպոս ալ վա-
զելով մօտ գնաց ու մտիկ կ՚ընէր
որ Եսայի մարգարէին գիրքը կը
կարդար , եւ ըսաւ . Կարդացածդ
31 կը հասկընա՞ս արդեօք ։ Ան ալ
ըսաւ . Ինտո՞ր կրնամ հասկընալ ,
թէ որ մէկը ինծի չառաջնորդէ .
ու աղաչեց Փիլիպպոսին՝ որ ելլէ
32 իր քովը նստի ։ Եւ գրքին մէջ
կարդացած տեղը աս էր . ըՈչխարի
պէս մորթուելու տարուեցաւ , ու
իր խուզողին առջեւը մունջ կեցող
գառնուկի պէս՝ անանկ իր բերանը
33 չբանար . Իր խոնարհութեանը
մէջ իր դատաստանը վերցուեցաւ .
եւ անոր ազգատոհմը ո՞վ պիտի

ա Գծ. բ. 38 ։ ժ. 45 ։ ժա. 17 ։
բ Մատ. ժ. 8 ։ Տես Դ Թագ. ե. 16 ։
գ Դան. դ. 27 ։ Բ Տիմ. բ. 25 ։
դ Եբր. ժբ. 15 ։
ե Ծն. ի. 7 ։ 17 ։ Ել. ը. 8 ։ Թու. իա. 7 ։ Գ Թագ. ժգ. 6 ։ Յոբ. խբ. 8 ։ Յակ. ե. 16 ։
զ Սոփ. գ. 10 ։
է Յովհ. ժբ. 20 ։
ը Եսա. ծգ. 7 ։ 8 ։

պատմէ . ինչու որ անոր կեանքը
34 երկրէն կը վերցուի ։ Ներքինին
պատասխան տուաւ Փիլիպպոսին ու
ըսաւ . Կ՚աղաչեմ քեզի , մարգա-
րէն որո՞ւ համար կ՚ըսէ աս . իրե՞ն
համար , թէ մէկ ուրիշի մը հա-
35 մար ։ Իսկ Փիլիպպոս իր բերանը
բացաւ , թու գրքին աս խօսքէն սկսե-
36 լով՝ Յիսուսը քարոզեց անոր ։ Ու
երբոր իրենց ճամբան կ՚երթային ,
ջուրի մը քով եկան . ու ըսաւ
ներքինին . Ահա ջուր , ժու ի՞նչ
բան զիս կ՚արգիլէ մկրտուելէն ։
37 [*Եւ Փիլիպպոս ըսաւ անոր . Եթէ
որ քու բոլոր սրտովդ կը հաւա-
տաս , կարելի է . անիկայ պատաս-
խան տուաւ՝ ու ըսաւ . իԿը հաւա-
տամ թէ Յիսուս Քրիստոսը Որդի
38 Աստուծոյ է ։] Ու հրաման ըրաւ
որ կառքը կայնեցրնեն . եւ երկուք-
նին ալ ջուրը իջան՝ Փիլիպպոսը
ու ներքինին . եւ մկրտեց զանիկայ ։
39 Ու երբոր ջուրէն դուրս ելան ,
լՏէրոջը Հոգին յափշտակեց Փի-
լիպպոսը , եւ ալ ներքինին անիկայ
չտեսաւ , ու իր ճամբան կ՚երթար
40 ուրախութեամբ ։ Բայց Փիլիպ-
պոս Ազովտոսի մէջ գտնուեցաւ .
ու պտըտելով բոլոր քաղաքներուն
աւետարան կը քարոզէր , մինչեւ որ
ինքը Կեսարիա եկաւ ։

Յամի Տեառն 34

թ Ղուկ. իդ. 27 ։ Գծ. ժը. 28 ։
ժ Գծ. ժ. 47 ։
* Շատ օրինակներ չունին աս 37 համարը ։
ի Մատ. իը. 19 ։ Մար. ժզ. 16 ։
Մատ. ժզ. 16 ։ Յովհ. զ. 70 ։ թ. 35 ։ 38 ։ ժա. 27 ։ Գծ. թ. 20 ։ Ա Յովհ. դ. 15 ։ ե. 5. 13 ։
լ Գ Թագ. ժը. 12 ։ Դ Թագ. բ. 16 ։ Եզեկ. գ. 12. 14 ։

## ԳԼ. Թ

1 Սօղոս՝ Դամասկոս երթալու ճամբուն վրայ 4 գետինը կ՚իյնայ , եւ կը տեսնէ զՅիսուս . 10 առաքելական պաշտօնին կը կանչուի , 18 եւ Անանիայէն կը մկրտուի . 20 համարձակ զՔրիստոս կը քարոզէ ։ 23 Հրեայք կը խորհին զանիկայ սպաննել . 29 նմանապէս Յոյները . բայց Սօղոս անոնց ձեռքէն կը փախչի ։ 31 Եկեղեցին խաղաղութիւն կը վայելէ . Պետրոս կը բժշկէ Ենեա անուն անդամալոյծը , 36 եւ Տաբիթան կը յարուցանէ ։

1 աԲայց Սօղոս տակաւին Տէրոջը ա-
շակերտներուն դէմ սպառնալիք
ու մահ փչելով՝ քահանայապետին
2 քովը գնաց . Եւ անկէ թուղթեր
ուզեց Դամասկոս ժողովարաննե-
րը տանելու , որ եթէ ան ճամբուն
հետեւողներ գտնելու ըլլայ , էրիկ
մարդիկ կամ կնիկ մարդիկ կապած
3 Երուսաղէմ բերէ ։ բՈւ երբոր
կ՚երթար , ու Դամասկոսին մօտե-
ցաւ , յանկարծ իր բոլորտիքը եր-
4 կինքէն լոյս մը փայլատակեց . Եւ
ինքը գետինը իյնալով՝ մէկ ձայն
մը լսեց՝ որ կ՚ըսէր իրեն . Սաւո՛ւղ՝
Սաւուղ , գինչո՞ւ զիս կը հալածես ։
5 Եւ անիկայ ըսաւ , Ո՞վ ես դուն՝
Տէ՛ր . եւ Տէրը ըսաւ . Ես եմ Յի-
սուսը՝ որ դուն կը հալածես . դ†դը-
ժուար բան է քեզի խթանի դէմ
6 կից զարնել ։ Ան ալ դողով ու
ապշութեամբ ըսաւ . Տէ՛ր՝ եի՞նչ
7 կ՚ուզես որ ընեմ ։ Եւ Տէրը ըսաւ

Յա. Տ. 35
ա Գծ. ը. 3 ։ Գաղ. ա. 13 ։ Ա Տիմ. ա. 13 ։
բ Գծ. իբ. 6 ։ իզ. 12 ։ Ա Կոր. ժե. 8 ։
գ Մատ. իե. 40 ։ 45 ։
դ Գծ. ե. 39 ։
† Ոմանք չունին ։
ե Ղուկ. գ. 10 ։ Գծ. բ. 37 ։ ժզ. 30 ։

Յամի Տեառն 35

անոր» . Ելի՛ր , ու քաղաքը մտի՛ր ,
և քեզի պիտի զրուցուի ինչ որ
պարտիս ընել . Իսկ այն մարդիկը
որ իր հետը կ'երթային , ապշած
կեցեր էին . ձայնը միայն կը լսէին ,
8 բայց մէկը չէին տեսներ ։ Եւ
Սօղոս գետնէն ելաւ , ու բաց աչ-
քերով մէկը չէր տեսներ . ուստի
անոր ձեռքէն բռնեցին՝ ու Դա-
9 մասկոս մտցուցին ։ Եւ իրեք օր
կեցաւ առանց տեսնելու , և ո՛չ
կերաւ , ո՛չ ալ խմեց ։
10 Ու Անանիա անունով աշակերտ
մը կար Դամասկոսի մէջ . և Տէրը
տեսիլքի մէջ անոր ըսաւ . Անա-
նիա . ան ալ ըսաւ . Տէ՛ր՝ ահա
11 հոս եմ ։ Եւ Տէրը ըսաւ անոր .
Ելի՛ր ու գնա՛ այն փողոցը՝ որ Ուղիղ
կ'ըսուի , և հոն Յուդային տանը
մէջ փնտռէ՛ Սօղոս անունով Տար-
սոնացի մը . վասն զի ահա անիկայ
12 աղօթք կ'ընէ . Ու տեսիլքի մէջ
մարդ մը տեսաւ Անանիա անունով՝
ներս մտած , և ձեռքը իր վրայ դը-
13 րած , որ տեսնէ ։ Անանիան ալ
պատասխան տուաւ . Տէ՛ր՝ շատե-
րէն լսեցի այն մարդուն համար՝ թէ
որչափ չարիքներ ըրաւ քու սուր-
14 բերուդ Երուսաղէմի մէջ . Եւ հոս
ալ քահանայապետներէն իշխա-
նութիւն ունի կապելու այն ամէնը ,
15 որ քու անունդ կը կանչեն ։ Եւ
Տէրը ըսաւ անոր . Գնա՛ դուն . Ին-
չու որ անիկայ ինծի ընտիր աման
մըն է , իմ անունս կրելու հեթա-
նոսներուն ու թագաւորներուն և
16 Իսրայէլի որդւոցը առջևը . Քանզի
ես իրեն պիտի ցուցընեմ թէ ո՛ր-
չափ պէտք է իրեն՝ իմ անուանս
17 համար նեղութիւն քաշել ։ Եւ
Անանիա գնաց՝ ու այն տունը մտաւ ,
և ձեռքը անոր վրայ դնելով՝ ըսաւ .
Սաւո՛ւղ եղբայր՝ Տէրը զիս խրկեց ,
այն Յիսուսը որ ճամբուն մէջ քեզի
երևցաւ՝ երբոր կու գայիր . որպէս
զի տեսութիւնդ առնես , ու Հո-
18 գւով Սրբով լեցուիս ։ Եւ շուտ
մը անոր աչքերէն թեփերու պէս
բաներ ինկան . և իսկոյն տեսաւ ,
19 ու ելաւ մկրտուեցաւ . Եւ կերա-
կուր ուտելով՝ ուժը վրան եկաւ .
Ու քանի մը օր Դամասկոսի մէջ
եղող աշակերտներուն հետը կեցաւ ։
20 Եւ անմիջապէս ժողովարաննե-
րուն մէջ կը քարոզէր Յիսուսը ,
թէ անիկայ է Աստուծոյ Որդին ։
21 Եւ ամէն լսողները մեծապէս զար-
մացեր էին , ու կ'ըսէին . Անիկայ
ան չէ՞ , որ Երուսաղէմի մէջ կը
կործանէր անոնք՝ որ աս անունը կը
կանչէին . և հոս ալ ան բանին հա-
մար եկած էր , որ անոնք կապած՝
22 քահանայապետներուն տանի ։ Բայց
Սօղոս՝ ալ աւելի կը զօրանար , և
Դամասկոսի մէջ բնակող Հրէա-
ները կը պապանձեցընէր , ապա-
ցուցանելով թէ Քրիստոսը ասի-
23 կայ է ։ Ու շատ օրեր անցնելէն
ետքը՝ Հրէաները խորհուրդ ըրին
24 որ անիկայ սպաննեն ։ Բայց Սօ-
ղոսին յայտնուեցաւ անոնց նեն-
գութիւնը . և ցորեկ ու գիշեր
դռները կը սպասէին որ անիկայ
25 սպաննեն ։ Իսկ աշակերտները գի-
շերով առին զանիկայ , ու զամ-
բիւղով մը կախելով՝ պատէն վար
իջեցուցին ։
26 Երբոր Սօղոս Երուսաղէմ եկաւ ,
կը ջանար աշակերտներուն յարե-
լու . բայց ամէնն ալ կը վախնա-
յին անկէ , չհաւատալով թէ անի-
27 կայ աշակերտ էր ։ Բայց Բառնա-
բաս անիկայ առնելով՝ առաքեալ-
ներուն տարաւ , ու պատմեց անոնց՝
թէ ի՛նչպէս ճամբուն վրայ Տէրը
տեսաւ , և թէ անոր հետ խօսեցաւ ,
և թէ ինչպէս Դամասկոսի մէջ
համարձակ քարոզեց Յիսուսի ա-
28 նունովը ։ Ու Երուսաղէմի մէջ
անոնց հետ կը մտնէր ու կ'ելլէր ,
Տէր Յիսուսին անունովը համար-
29 ձակ քարոզելով ։ Նաև Հելլե-
նացւոց դէմ կը խօսէր՝ և վիճաբա-
նութիւն կ'ընէր . Անոնք ալ կը
30 փնտռէին անիկայ սպաննել ։ Իսկ
եղբայրները իմանալով՝ զանիկայ
Կեսարիա իջեցուցին , և անկէ Տար-
սոն խրկեցին զանիկայ ։
31 Այն ատենը եկեղեցիները բոլոր
Հրէաստանի և Գալիլեայի ու Սա-
մարիայի մէջ խաղաղութիւն ունե-
ցան , և շինութիւն կ'ընդունէին ,
ու Տէրոջը երկիւղովը և Հոգւոյն
Սրբոյ մխիթարութեամբը քալելով
կ'աճէին ։
32 Ու երբոր Պետրոս ամէն տեղ կը
պտըտէր , Լիւդդեա բնակող սուր-
33 բերուն քովն ալ իջաւ ։ Եւ հոն
մէկ մարդ մը գտաւ , որուն անունը
Ենեա էր , ութը տարիէ 'ի վեր
34 մահիճը պառկած անդամալոյծ . Եւ
ըսաւ անոր Պետրոս . Ենեա՛ , Յի-
սուս Քրիստոս քեզ կը բժշկէ .
ելի՛ր՝ ու քու անկողինդ շինէ՛ . ան
35 ալ շուտ մը ելաւ ։ Եւ Լիւդ-
դեայի ու Սարոնի մէջ բնակողնե-
րուն ամէնը անիկայ տեսան , ու
36 Տէրոջը դարձան ։ Եւ Յոպպէի
մէջ աշակերտ եղած կնիկ մը կար՝
անունը Տաբիթա , ( որ թարգ-
մանուելով՝ Այծեմնիկ կ'ըսուի . )
ասիկայ լեցուած էր բարի գործքե-
րով ու ողորմութիւններով , որ ին-
37 քը կ'ընէր ։ Ու եղաւ որ այն օրերը
ինքը հիւանդացաւ ու մեռաւ .
լուացին անիկայ՝ և վերի սենեակ

Յամի Տեառն 35

Յա. Տ. 37

Յա. Տ. 38

Յամի Տեառն 38

38 մը գային ։ Ու Լիւդդիա Յոպպէին
մօտ էր․ ուստի աշակերտները լսե-
լով թէ Պետրոսը հոն է, անոր
երկու մարդ խրկեցին, աղաչելով
39 որ չուշանայ իրենց գալու ։ Պետ-
րոս ալ ելաւ անոնց հետը եկաւ․
ու երբոր եկաւ, վերի սենեակը հա-
նեցին զանիկայ․ և բոլոր որբեւա-
րիները անոր բոլորտիքը կայնեցան,
կու լային ու կը ցուցնէին ան
բաճկոնները և հանդերձները՝ որ
կ'ընէր Այծեմնիկը, քանի որ իրենց
40 հետն էր ։ Պետրոս ալ ֆամէնը
դուրս հանելով՝ ածունկի վրայ եկաւ
ու աղօթք ըրաւ, և դէպ 'ի մար-
մինը դառնալով՝ բըսաւ․ Տաբիթա՛
ելի՛ր կայնէ․ ան ալ իր աչքերը
բացաւ, ու Պետրոսը տեսնելով՝
41 ելաւ նստաւ ։ Ինքն ալ
ձեռքը անոր տուաւ, ու վերցուց
զանիկայ․ և սուրբերը ու որբեւա-
րիները կանչելով՝ անոնց առջևը ողջ
42 կայնեցուց զանիկայ ։ Եւ աս բանը
բոլոր Յոպպէին մէջ իմացուեցաւ,
գու շատերը Տէրոջը հաւատացին ։
43 Եւ եղաւ որ ինքը շատ օրեր Յոպ-
պէ կեցաւ՝ դՍիմոն անունով կաշի
բանողի մը քով ։

ֆ Մատ․ թ․ 25 ։
ա Գր․ է․ 59 ։
բ Մար․ ե․ 41, 42 ։ Յով․ ժա․ 43 ։
գ Յով․ ժա․ 45 ։ ժբ․ 11 ։
դ Գր․ ժ․ 6 ։

## ԳԼ․ Ժ

1 Կոռնելիոս անունով բարեպաշտ մարդ մը 5 Աստուծոյ հրեշտակէն հրաման առած՝ կանչել կու տայ Պետրոսը ։ 11 որ մէկ տեսիլքի մը մէջ կը սորվի չգարշիլ հեթանոսներէն ։ 34 Պետրոս զՔրիստոս կը քարոզէ Կոռնելիոսին ու անոր տանը մէջ եղողներուն, 44 և դեռ իր խօսքը չլմընցուցած՝ Սուրբ Հոգին կը հանգչի անոնց վրայ, 48 և կը մկրտուին ։

Յա․ Տ․ 41

1 Կեսարիայի մէջ մարդ մը կար՝
Կոռնելիոս անունով, հարիւ-
րապետ՝ Իտալացի ըսուած գուն-
2 դէն․ աԲարեպաշտ ու բաստուա-
ծավախ իր բոլոր տունովը․ որ ժո-
ղովուրդին շատ ողորմութիւններ
կու տար, և ամէն ատեն Աստու-
3 ծոյ աղօթք կ'ընէր ։ գԱնիկայ օ-
րուան ժամը իններն ատենները տե-
սիլքի մէջ Աստուծոյ հրեշտակը
յայտնի տեսաւ, որ իր քովը մը-
տաւ՝ և իրեն ըսաւ․ Կոռնելիոս․
4 Ան ալ անոր նայելով՝ ու խիստ
վախնալով, ըսաւ․ Ի՞նչ է Տէր․
ան ալ ըսաւ անոր․ Քու աղօթք-
ներդ ու ողորմութիւններդ Աս-
տուծոյ առջևը ելան յիշատակի
5 համար ։ Եւ հիմա Յոպպէ մար-
դիկ խրկէ, ու կանչէ Սիմոն ա-
նունով մէկը՝ որ Պետրոս մակա-
6 նուանեալ է․ Անիկայ իբրև հիւր
կը կենայ դՍիմոն անունով կաշի
բանողի մը քով, որուն տունը ծո-
7 վուն մօտ է *։ Ու երբոր գնաց
ան հրեշտակը՝ որ իր հետը կը խօ-
սէր, իր ծառաներէն երկուքը կան-

ա Հմր 22 ։ Գր․ ը․ 2 ։ իբ․ 12 ։
բ Հմր 35 ։
գ Հմր 30 ։ Գր․ ժա․ 13 ։
դ Գր․ թ․ 43 ։

* Ոմանք կ'ա-ւելցնեն՝ անիկայ քե-զի պիտի ըսէ ինչ որ պարտիս ընել ։

Յամի Տեառն 41

չեց, ու իր քովը սպասողներէն
8 ալ բարեպաշտ զինուոր մը, Եւ
բոլորը անոնց պատմելով՝ Յոպպէ
խրկեց զանոնք ։
9 Ու հետևեալ օրը երբոր անոնք
ճամբայ երթալով՝ քաղաքին մօ-
տեցան, եՊետրոս ժամը վեցին
ատենները տանիքը ելաւ աղօթք
10 ընելու ։ Եւ խիստ անօթեցած ըլ-
լալով՝ կ'ուզէր ճաշ ընել․ ու
քանի որ կերակուրի պատրաստու-
թիւն կը տեսնէին, իր վրայ մտքի
11 յափշտակութիւն մը եկաւ․ զԵւ
տեսաւ երկինքը բացուած, ու
չորս ծայրէն կապուած աման մը
մեծ կտաւի մը պէս, որ իջաւ
12 երկրի վրայ․ Որուն մէջը կար երկրի
բոլոր չորքոտանիները ու գազան-
ները և սողունները, ու երկնից
13 թռչունները ։ Եւ ձայն մը եկաւ
իրեն․ Ելի՛ր Պետրոս՝ մորթէ ու
14 կեր ։ Բայց Պետրոս ըսաւ․ Քաւ
լիցի Տէր․ էինչու որ ես ամենևին
պիղծ կամ անմաքուր բան կերած
15 չեմ ։ Նորէն մէյմըն ալ ձայն ե-
կաւ իրեն․ ըԱն որ Աստուած մաք-
16 րեց, դուն պիղծ մի՛ սեպեր ։ Ա-
սիկայ երեք անգամ եղաւ, և ա-
17 մանը երկինքը վերցաւ ։ Ու Պետ-
րոս իր մտքին մէջ կը զարմանար՝
թէ ինչ պիտի ըլլայ ան իր տե-
սած տեսիլքը, ահա Կոռնելիոսէն
խրկուած մարդիկը Սիմոնին տունը
հարցուցին, ու դրանը առջևը
18 կայնեցան․ Եւ կանչելով կը հար-
ցընէին թէ, Սիմոնը՝ որ Պետրոս
19 կ'ըսուի, հո՞ս կը կենայ ։ Ու երբ-
որ Պետրոս ան տեսիլքին վրայով
կը մտածէր, թՀոգին Սուրբ ըսաւ
անոր․ Ահա՛ երեք մարդիկ քեզ կը
20 փնտռեն․ ժՈւստի ելի՛ր իջի՛ր, և
անոնց հետը գնա՛ առանց խղճա-
հարութեան, ինչու որ ես խրկեցի
21 անոնք ։ Պետրոս ալ ան մարդիկ-
ներուն քովը իջնելով՝ ըսաւ․ Ահա՛
ես եմ անիկայ որ դուք կը փնտռ-
ռէք, ի՞նչ բանի համար եկած
22 էք ։ Անոնք ալ ըսին․ իԿոռնելիոս
հարիւրապետը՝ արդար և աստուա-
ծավախ մարդ՝ լբոլոր Հրէից ազ-
գէն վկայուած՝ սուրբ հրեշտակէ
մը հրաման առաւ, որ քեզ իր
տունը կանչէ, և քեզմէ խօսքեր
23 լսէ ։ Ան ատենը ներս կանչեց ա-
նոնք, և իր քովը վար դրաւ ։
Ու հետևեալ օրը Պետրոս ելաւ՝
անոնց հետը գնաց, խև քանի մըն
ալ Յոպպէէն եղող եղբայրներէն
24 իր հետը գացին ։ Ու հետևեալ
օրը Կեսարիա մտան․ Կոռնելիոսն
ալ իր ազգականները և մտերիմ
բարեկամները կանչած՝ անոնց կը
25 սպասէր ։ Ու երբոր Պետրոս ներս

ե Գր․ ժա․ 5, 6 ։
զ Գր․ է․ 55 ։ Յայտ․ ժթ․ 11 ։
է Ղև․ ժա․ 4 ։ ի․ 25 ։ Օր․ ժդ․ 3, 7 ։ Եզեկ․ դ․ 14 ։
ը Մատ․ ժե․ 11 ։ Հմր 28 ։ Հռով․ ժդ․ 14, 17, 20 ։ ա Կոր․ ժ․ 25 ։ ա Տիմ․ դ․ 4 ։ Տիտ․ ա․ 15 ։
թ Գր․ ժա․ 12 ։
ժ Գր․ ժե․ 7 ։
ի Հմր 1, 2 ։
լ Գր․ իբ․ 12 ։
խ Հմր 45 ։ Գր․ ժա․ 12 ։

կը մտնէր , Կոռնելիոս անոր դիմա-
ցը ելաւ , ու անոր ոտքը ինկնալով՝
26 երկրպագութիւն կ'ընէր ։ Բայց
Պետրոս անիկայ կանգնեցուց՝ ու
ըսաւ . Ելի՛ր կայնէ . ես ինքնս ալ
27 մարդ եմ ։ Եւ անոր հետը խօսակ-
ցելով ներս մտաւ , ու հոն շատ
28 մարդիկ ժողվուած գտաւ . Եւ ը-
սաւ անոնց . Դուք գիտէք թէ
ի՛նչպէս ապօրինաւոր բան է Հրէ-
այ մարդու մը օտարազգիի հետ
հաղորդակցութիւն ընելը կամ ա-
նոր մօտենալը . բայց Աստուած
ինծի ցուցուց որ մարդիկներէն մէ-
կո՛ւն պիղծ կամ անմաքուր չըսեմ ։
29 Անոր համար ես ալ որ կանչուեցայ՝
առանց դէմ խօսելու եկայ . բայց
հիմա կը հարցընեմ , ի՞նչ բանի
30 համար զիս կանչեցիք ։ Կոռնելիոս
ալ ըսաւ . Չորս օր առաջ մինչև
աս ժամս ծոմ կը պահէի , ու ժամը
իննին տանս մէջ աղօթք կ'ընէի .
և ահա փայլուն հանդերձներով
մարդ մը կայնեցաւ առջևս , ու
31 ըսաւ . Կո՛ռնելիոս՝ քու աղօթքդ
լսուեցաւ , և քու ողորմութիւն-
ներդ Աստուծոյ առջևը յիշուե-
32 ցան . Ուստի մարդ խրկէ Յոպպէ ,
ու կանչէ՛ Սիմոնը՝ որ Պետրոս ալ
կ'ըսուի . անիկայ ծովուն մօտ
Սիմոն անունով կաշի բանողի մը
տանը մէջ իբրև հիւր կը կենայ . որ
երբոր գայ , քեզի պիտի խօսի ։
33 Ուստի անմիջապէս մարդիկ խրկեցի
քեզի . դուն ալ աղէկ ըրիր որ
եկար . և հիմա մենք ամէնքս Աս-
տուծոյ առջևը կեցեր ենք լսելու՝
ան ամէն բաները , որ Աստուծմէ
հրամայուած է քեզի ։
34 Պետրոս իր բերանը բացաւ՝ ու
ըսաւ . Ճշմարտութեամբ կը հաս-
կընամ որ Աստուծոյ քովը աչառու-
35 թիւն չկայ . Հապա ամէն ազգի
մէջ՝ ան որ անկէ կը վախնայ , ու
արդարութիւն կը գործէ , անոր
36 ընդունելի է ։ Ան խօսքը որ Իս-
րայէլի որդւոցը խրկեց Աստուած
խաղաղութիւն քարոզելու Յի-
սուս Քրիստոսի ձեռքովը . (ասի-
37 կայ է ամենուն Տէրը .) Դուք
աղէկ գիտէք ան բանը , որ բոլոր
Հրէաստանի մէջ եղաւ Գալիլեա-
յէն սկսած՝ ան մկրտութենէն
38 ետև որ Յովհաննէս քարոզեց . Յի-
սուսը որ Նազարեթէն էր , Որ
Աստուած անիկայ օծեց Սուրբ Հո-
գիով և զօրութիւնով , որ պտը-
տեցաւ բարիք ընելով , Ու Սա-
տանայէն բոլոր տանջուածները
բժշկելով , քանզի Աստուած իր
39 հետն էր . Եւ մենք վկայ ենք ան
ամէն բաներուն՝ որ ըրաւ Հրէաս-
տանի երկրին մէջ ու Երուսաղէմի
մէջ , որն որ փայտէն կախած
40 սպաննեցին ալ ։ Աստուած ա-
նիկայ երրորդ օրը յարուց , և
41 յայտնի ըրաւ զանիկայ , Ձէ՛ թէ
բոլոր ժողովուրդին , հապա մեզի՝
առաջուց Աստուծմէ վկայ ըլլալու
ընտրուածներուս . որ մենք իրեն
հետ կերանք ու խմեցինք՝ անոր
մեռելներէն յարութիւն առնելէն
42 ետքը ։ Եւ ինքը պատուիրեց մե-
զի՝ որ ժողովուրդին քարոզենք ու
վկայութիւն տանք , թէ անիկայ
է Աստուծմէ սահմանուած կեն-
դանիներուն ու մեռելներուն դա-
43 տաւորը ։ Անոր կը վկայեն բոլոր
մարգարէները . թէ ամէն իրեն հա-
ւատացողները իր անունովը մեղաց
թողութիւն կ'առնեն ։
44 Ու երբոր Պետրոս աս խօսքերը
կը խօսէր . Հոգին Սուրբ իջաւ
ամենուն վրայ , որոնք խօսքը կը
45 լսէին ։ Եւ թլփատուածներէն
եղող հաւատացեալները՝ որոնք
Պետրոսին հետը եկած էին , զար-
մացան՝ որ հեթանոսներուն վրայ
ալ Հոգւոյն Սրբոյ պարգևը կը
46 լեցուէր ։ Քանզի կը լսէին ա-
նոնցմէ որ օտար լեզուներով կը
խօսէին , և զԱստուած կը փառա-
47 ւորէին ։ Ան ատենը Պետրոս պա-
տասխան տուաւ . Կրնա՞յ մէկը
ջուրը արգիլել որ ասոնք չմկըր-
տուին , որոնք Հոգին Սուրբն ալ
48 ընդունեցին մեզի պէս ։ Ու
հրաման ըրաւ որ Տէրոջը անու-
նովը մկրտուին . ան ատենը իրեն
աղաչեցին որ քանի մը օր հոն մնայ ։

## ԳԼ . ԺԱ

1 Պետրոս հեթանոսներուն մէջ մտնելուն հա-
մար ամբաստանուած ըլլալով՝ 5 իր իրաւուն-
քը կը ցուցընէ . 18 որ ընդունելի կ'ըլլայ ։
19 Աւետարանը կը տարածուի Փիւնիկէ՝ Կիպ-
րոս և Անտիոք . ու Բառնաբաս կը խրկուի
հաւատացեալները հաստատելու . 26 Աշա-
կերտները նախ և առաջ Անտիոքի մէջ Քրիս-
տոնեայ կ'անուանուին . 27 անոնք օգնութիւն
կը խրկեն Հրէաստանի սովի ժամանակ ։

1 Եւ առաքեալները ու եղբայրները
որ Հրէաստանի կողմերն էին ,
լսեցին որ հեթանոսներն ալ Աս-
2 տուծոյ խօսքը ընդուներ են ։ Բայց
երբոր Պետրոս Երուսաղէմ ելաւ ,
թլփատուածներէն եղողները անոր
3 հետ կը վիճէին . Ու կ'ըսէին թէ ,
Դուն անթլփատ մարդոց քովը մը-
տար , և անոնց հետ հոն կերար ։
4 Պետրոս ալ սկսաւ բանը կարգով
5 պատմել անոնց , ու ըսաւ . Ես
Յոպպէ քաղաքը աղօթք կ'ընէի ,
ու մտքի յափշտակութեան մէջ
տեսիլք մը տեսայ . մէկ աման մը
մեծ կտաւի պէս՝ չորս ծայրերէն եր-
կինքէն կախուած իջաւ , ու մինչև
6 ինծի հասաւ . Որուն վրայ աչքս

Յամի Տեառն 41

Գլ. ժդ. 14 ։ Յայտ. ժթ. 10 ։ իբ. 9 ։
Յօհ. դ. 9 ։ ժը. 28 ։ Գլ. ժա. 3 ։ Գաղ. բ. 12 . 14 ։
Գլ. ժե. 8 . 9 ։ Եփե. գ. 6 ։
Գլ. ա. 10 ։ Մատ. իը. 3 ։ Մար. ժզ. 5 ։ Ղու. իդ. 4 ։
Հմր 4 , Ճ ։ Դան. ժ. 12 ։
Եբր. զ. 10 ։
Բ Օր. ժ. 17 ։ Բ Մն. ժթ. 7 ։ Յոբ. լդ. 19 ։ Հռով. բ. 11 ։ Գաղ. բ. 6 ։ Եփե. զ. 9 ։ Կող. գ. 25 ։ Ա Պետ. ա. 17 ։
Գլ. ժե. 9 ։ Հռով. բ. 13 . 27 ։ գ. 22 . 29 ։ ժ. 12 . 13 ։ Ա Կոր. ժբ. 13 ։ Գաղ. գ. 28 ։ Եփե. բ. 13 . 18 ։ գ. 6 ։
Ես. ծէ. 19 ։ Եփե. բ. 14 . 16 . 17 ։ Կող. ա. 20 ։
Մատ. իը. 18 ։ Հռով. ժ. 12 ։ Ա Կոր. ժե. 27 ։ Եփե. ա. 20 . 22 ։ Ա Պետ. գ. 22 ։ Յայտ. ժէ. 14 ։ ժթ. 16 ։
Ղու. գ. 14 ։ Ղու. գ. 18 ։ Գլ. բ. 22 ։ դ. 27 ։ Եբր. ա. 9 ։
Յօհ. գ. 2 ։
Գլ. բ. 32 ։

Յամի Տեառն 41

Գլ. ե. 30 ։
Գլ. բ. 24 ։
Յօհ. ժդ. 17 . 22 ։ Գլ. ժգ. 31 ։
Ղու. իդ. 30 . 43 ։ Յօհ. իա. 13 ։
Մատ. իը. 19 . 20 ։ Գլ. ա. 8 ։
Յօհ. ե. 22 . 27 ։ Գլ. ժէ. 31 ։
Հռով. ժդ. 9 . 10 ։ Բ Կոր. ե. 10 ։ Բ Տիմ. դ. 1 ։ Ա Պետ. դ. 5 ։
Ես. ծգ. 11 ։ Երեմ. լա. 34 ։ Դան. թ. 24 ։ Միք. է. 18 ։ Զաք. ժգ. 1 ։ Մաղ. դ. 2 ։ Գլ. իզ. 22 ։
Գլ. ժե. 9 ։ իզ. 18 ։ Հռով. ժ. 11 ։ Գաղ. գ. 22 ։
Գլ. դ. 31 ։ ը. 15 . 16 . 17 ։ ժա. 15 ։
Հմր 23 ։
Գլ. ժա. 18 ։ Գաղ. դ. 14 ։
Գլ. ժա. 17 ։ ժե. 8 . 9 ։ Հռով. ժ. 12 ։
Ա Կոր. ա. 17 ։
Գլ. բ. 38 ։ ը. 16 ։

Գլ. ժ. 45 ։ Գաղ. բ. 12 ։
Գլ. ժ. 28 ։
Գաղ. բ. 12 ։
Ղու. ա. 3 ։
Գլ. ժ. 9 . Ճ ։

Յամի Տեառն 41

անկեր կը նայէի, և տեսայ երկրի
չորքոտանիները, ու գազանները,
և սողունները, ու երկնից թռչուն-
7 ները ։ Եւ ձայն մը լսեցի որ կ՚ը-
սէր ինծի. Ելի՛ր Պետրոս՝ մորթէ՛
8 ու կե՛ր ։ Բայց. ես ըսի. Քա՛ւ
լիցի Տէ՛ր. ինչու որ պիղծ կամ
անմաքուր բան մը ամենևին մտած
9 չէ իմ բերանս ։ Պատասխան տուաւ
ինծի երկրորդ անգամ ձայնը
երկինքէն. Ան որ Աստուած մաք-
10 րեց, դուն պիղծ մի՛ սեպեր ։ Աս
իրե՛ք անգամ եղաւ, ու նորէն բո-
11 լորը երկինքը քաշուեցաւ ։ Եւ
ահա՛ իսկոյն իրեք մարդ Կեսարիա-
յէն ինծի խրկուած՝ էջած իմ եղած
12 տանս առջևը կեցան ։ Ն Հոգին
ալ ինծի ըսաւ՝ որ անոնց հետը
երթամ առանց խղճահարութեան.
Եւ աս վեց եղբայրներն ալ ինծի հետ
գացին, ու մտանք ան մարդուն
13 տունը ։ Եւ անիկայ մեզի պատ-
մեց թէ ինտոր իր տանը մէջ հրեշ-
տակը տեսաւ՝ որ կայներ էր, և
իրեն կ՚ըսէր. Մա՛րդ խրկէ Յոպպէ՝
ու կանչէ՛ Սիմոնը՝ որ Պետրոս ալ
14 կը կոչուի. Որ ան քեզի խօսքեր
պիտի խօսի, որոնցմով փրկուիս
15 դուն՝ և քու բոլոր տունդ ։ Ու
երբոր սկսայ խօսիլ, Հոգին Սուրբ
անոնց վրայ իջաւ, Ի ինտոր որ ա-
16 ռաջուց մեր վրայ ալ ։ Ան ատենը
յիշեցի Տէրոջը խօսքը՝ որ կ՚ըսէր.
Յովհաննէս ջրով մկրտեց, Բայց
դուք Սուրբ Հոգիով պիտի մկըր-
17 տուիք ։ Ուստի թէ որ Աստուած
մի և նոյն շնորհքը տուաւ անոնց՝
ինչպէս որ մեզի ալ, երբոր Տէր
Յիսուս Քրիստոսի հաւատացին,
Ես ո՞վ էի որ կարենայի Աստուծոյ
18 դէմ դնել ։ Աս բաները լսելով՝
ձայներնին կտրեցին, և Աստուած
կը փառաւորէին՝ ու կ՚ըսէին. Ուրեմն Աստուած հեթանոսներուն ալ
կենաց համար ապաշխարութիւն
տուաւ ։

19 Եւ Ստեփաննոսին համար եղած նեղութենէն ցրուեցան
եղածները մինչև Փիւնիկէ ու Կիպ-
րոս և Անտիոք հասան. ու մէկու
մը Աստուծոյ խօսքը չէին խօսեր,
20 միայն թէ Հրէաներուն ։ Բայց
անոնցմէ ոմանք Կիպրացի և Կիւրե-
նացի մարդիկ էին, որոնք երբոր
Անտիոք մտան, Յոյներուն հետ կը
խօսէին՝ Տէր Յիսուսը քարոզելով ։
21 Ու Տէրոջը ձեռքը անոնց հետն էր,
և բազմաթիւ մարդիկ հաւատալով՝
22 Տէրոջը դարձան ։ Եւ անոնց վրա-
յով լուրը Երուսաղէմի եկեղե-
ցիին ականջը հասաւ. ու Բառ-
նաբասը խրկեցին՝ որ մինչև Անտիոք
23 երթայ. Որ երբոր եկաւ՝ և Աս-
տուծոյ շնորհքը տեսաւ, ուրախա-
ցաւ. ու կը յորդորէր ամէնն ալ՝
որ յօժար սրտով Տէրոջը հետ կե-
24 ցած միան. Քանզի ինքը բարի
մարդ էր, ու Սուրբ Հոգիով և
հաւատքով լեցուն. ու Տէրոջը
25 շատ ժողովուրդ աւելցաւ ։ Ետքը
Բառնաբաս Տարսոն ելաւ՝ Սօղոսը
փնտռելու, և զանիկայ գտնելով՝
26 Անտիոք բերաւ ։ Ու եղաւ որ ա-
նոնք լման տարի մը եկեղեցիին հետ
մէկտեղ ժողվուելով, շատ ժողո-
վուրդի սորվեցուցին. ու պինտ ա-
ռաջ Անտիոքի մէջ աշակերտները
Քրիստոնեայ անուանեցան ։
27 Ան օրերը Երուսաղէմէն մարգա-
28 րէներ իջան Անտիոք ։ Եւ անոնց-
մէ մէկը Ագաբոս անունով՝ ելաւ
իմացուց Հոգիին զօրութեամբը՝
թէ մեծ սով մը պիտի ըլլայ բոլոր
աշխարհ, որ և եղաւ Կղօդիոսին
29 օրերը ։ Եւ աշակերտները որոշե-
ցին որ իրենցմէ ամէն մէկը ձեռքէն
եկածին չափ Հրէաստանի մէջ բը-
նակող եղբայրներուն օգնութիւն
30 խրկեն. Որ կատարեցին ալ, երէց-
ներուն խրկելով Բառնաբասին ու
Սօղոսին ձեռքովը ։

Ցամի Տեառն 42

## ԳԼ. ԺԲ

1 Հերովդէս թագաւորը կը հալածէ քրիստոնեաները. Յակոբոսը կը սպաննէ, և Պետրոսը բանտը դնել կու տայ. որուն համար եկեղեցին աղօթք ընելով, Տէրոջը հրեշտակը կ՚ազատէ զանիկայ ։ 20 Հերովդէս իր հպարտութեամբը Աստուծոյ վայելուչ եղած պատիւը իրեն առնելով՝ Տէրոջը հրեշտակէն կը զարնուի, և չարաչար կը մեռնի ։ 24 Անոր մեռնելէն ետև՝ Աստուծոյ խօսքը յաջողութեամբ կը տարածուի ։

1 Ան ատենները Հերովդէս թագա-
ւորը ձեռք զարկաւ եկեղեցիէն
2 մէկ քանիները չարչարելու ։ Եւ
Յովհաննէսին եղբայրը Յակոբոսը
3 սրով սպաննեց ։ Ու տեսնելով որ
Հրէաներուն հաճելի է, անոր վրայ
Պետրոսն ալ բռնեց. Ու բաղար-
4 ջակերաց օրերն էին ։ Զանիկայ
երբոր բռնեց՝ բանտը դրաւ, և չորս
կարգ չորսական զինուորներու
յանձնեց որ պահեն, և կ՚ուզէր
զատկէն ետև ժողովուրդին հանել
5 զանիկայ ։ Ուստի Պետրոս բանտին
մէջը պահուած էր, բայց եկեղեցին
անդադար աղօթք կ՚ընէր Աստու-
6 ծոյ՝ անոր համար ։ Ու երբոր Հե-
րովդէս ուզեց անիկայ դուրս բերել,
ան գիշերը Պետրոս երկու զինուոր-
ներու մէջտեղը կը քնանար՝ կրկին
շղթաներով կապուած. ու պահա-
պանները դրանը առջևը բանտը կը
7 պահպանէին ։ Եւ ահա՛ Տէրոջը
հրեշտակը եկաւ վրան կայնեցաւ,
ու տանը մէջ լոյս մը ծագեց, և
Պետրոսին կողը խթելով՝ արթըն-

Margin references: Յոհ. ԺԴ. 13. Գլ. Ժ. 19. ԺԵ. 7. — Գլ. Ժ. 23. — Գլ. Ժ. 30. — Գլ. Բ. 4. — Մատ. Գ. 11. Յոհ. Ա. 26, 33. Գլ. Ա. 5. ԺԹ. 4. Ես. ԽԴ. 3. Յովել. Բ. 28. Գ. 18. — Գլ. ԺԵ. 8, 9. — Գլ. Ժ. 47. — Հռով. Ժ. 12, 13. ԺԵ. 9, 16. — Գլ. Ը. 1. — Ղուկ. Ա. 66. Գլ. Բ. 47. — Գլ. Թ. 35. — Յամ. Տ. 42 — Գլ. Թ. 27. — Գլ. ԺԳ. 43. ԺԴ. 21. — Գլ. Զ. 5. — Հռ. 21. Գլ. Ե. 14. — Յամ. Տ. 43 — Գլ. Թ. 30. — Գլ. Բ. 17. ԺԳ. 1. ԺԵ. 32. ԻԱ. 9. Ա Կոր. ԺԲ. 28. Եփե. Դ. 11. — Գլ. ԻԱ. 10. — Հռով. ԺԵ. 26. Ա Կոր. ԺԶ. 1. Բ Կոր. Թ. 1. — Յամ. Տ. 44 — Գլ. ԺԲ. 25. — Մատ. Գ. 21. Ի. 23. — Ել. ԺԲ. 14, 15. ԻԳ. 15. — Յոհ. ԻԱ. 18. — Գլ. Ե. 19.

Յամի Տեառն 44

ե Սաղ. ճիզ. 1։
զ Գլ. ժ. 3. 17։ ժա. 5։
է Գլ. ժզ. 26։
ը Սաղ. լդ. 7։ Դան. գ. 28։ զ. 22։ Եբր. ա. 14։
թ Յոբ. ե. 19։ Սաղ. լդ. 18. 19։ լդ. 22։ խա. 2։ դէ. 10։ բ Կոր. ա. 10։ բ Պետ. բ. 9։
ժ Գլ. ժե. 37։
ի Գլ. դ. 23։ ւ Հմր 5։
ի Ծն. խը. 16։ Մատ. ժը. 10։
ձ Գլ. ժգ. 16։ ժթ. 33։ իա. 40։
կ Թագ. ե. 9. 11։ Եզեկ. իէ. 17։

ցուց զանիկայ, ու ըսաւ. Շուտով
ելիր. ու շղթաները անոր ձեռքե-
8 րէն վար ինկան։ Եւ հրեշտակը ը-
սաւ անոր. Գօտիդ կապէ, ու հո-
ղաթափներդ ոտքդ հագիր. անի-
կայ ալ այնպէս ըրաւ. և ըսաւ ա-
նոր. Հանդերձդ վրադ առ՝ ու եկուր
9 իմ ետևէս։ Ան ալ ելլելով անոր
ետևէն կ'երթար, և չէր գիտեր
թէ ան հրեշտակէն եղած բանը ի-
րաւ է, հապա կը կարծէր թէ տես-
10 իլք կը տեսնէ։ Ու երբոր անոնք
առաջին ու երկրորդ պահապաննե-
րէն անցան, եկան մինչև երկաթի
դուռը, որ քաղաքին մէջը կը հա-
նէր, որ ան ինքիրմէ բացուեցաւ
անոնց. և անկէ ելլելով՝ մէկ փողոց
մը անցան. հրեշտակն ալ իսկոյն
11 անկէ զատուեցաւ։ Ու Պետրոս
ինքզինքին գալով՝ ըսաւ. Հիմա
ճշմարտապէս գիտեմ որ Տէրը իր
հրեշտակը խրկեց, և ազատեց զիս
Հերովդէսին ձեռքէն, ու Հրէից
ժողովուրդին բոլոր ակնկալութե-
12 նէն։ Եւ մտածելով՝ եկաւ Մար-
կոս ըսուած Յովհաննէսին մօրը
Մարիամին տունը, ուր որ շատերը
13 ժողվուած աղօթք կ'ընէին։ Եւ
տանը դուրսի դուռը որ զարկաւ,
Հռովդէ անունով աղախին մը գնաց
14 ականջ դնելու. Ու երբոր Պետրո-
սին ձայնը ճանչցաւ, ուրախութե-
նէն դուռը չբացաւ, հապա ներս
վազելով պատմեց, թէ Պետրոս
15 դրանը առջևը կայներ է։ Իսկ ա-
նոնք ըսին անոր, Խենթեցեր ես.
բայց ինքը կը պնդէր թէ անանկ է.
անոնք ալ կ'ըսէին. Անոր հրեշ-
16 տակը պիտի ըլլայ։ Սակայն Պետ-
րոս անդադար կը զարնէր. ու երբ-
որ բացին, զինքը տեսնելով ապշե-
17 ցան։ Բայց անիկայ ձեռքով նը-
շան կ'ընէր անոնց՝ որ լուռ կենան,
ու պատմեց անոնց թէ ինչպէս Տէ-
րը զինքը բանտէն հանեց, և ըսաւ.
Ասիկայ Յակոբոսին ու եղբայրնե-
րուն պատմեցէք. և ելաւ ուրիշ
18 տեղ գնաց։ Ու երբոր առտու ե-
ղաւ, մեծ խռովութիւն կար զի-
նուորներուն մէջը թէ արդեօք ի՞նչ
19 եղաւ Պետրոսը։ Հերովդէս ալ
երբոր ուզեց անիկայ՝ ու չգտաւ,
պահապաններուն հարցուփորձ ը-
նելով՝ հրաման ըրաւ որ սպան-
նուին. և Հրէաստանէն Կե-
սարիա իջաւ, ու հոն կը կենար։
20 Եւ Հերովդէս խիստ թշնամացած
էր Տիւրացիներուն ու Սիդոնացի-
ներուն հետ. անոնք ալ միաբան
հաւանութեամբ իրեն եկան, ու
թագաւորին Բղաստոս սենեկապե-
տը համոզելով՝ հաշտութիւն կը
խնդրէին. ինչու որ իրենց երկի-
րը թագաւորին երկրէն ապրուստ
21 կ'առնէր։ Եւ մէկ որոշուած օր
մը Հերովդէս թագաւորական հան-
դերձը հագած ու ատեանը նստած՝
անոնց ատենաբանութիւն կ'ընէր։
22 Ժողովուրդն ալ կ'աղաղակէր թէ,
Ասիկայ Աստուծոյ ձայն է, ու չէ
23 թէ մարդու։ Եւ իսկոյն Տէրոջը
հրեշտակը զանիկայ զարկաւ, Աս-
տուծոյ փառք չտալուն համար. և
որդնալից ըլլալով՝ մեռաւ։
24 Եւ Աստուծոյ խօսքը կ'աճէր ու
25 կը շատնար։ Եւ Բառնաբաս ու
Սօղոս երբոր իրենց յանձնուած պաշ-
տօնը լմնցուցին, Երուսաղէմէն
դարձան, Մարկոս ըսուած Յով-
հաննէսն ալ հետերնին առնելով։

Յամի Տեառն 44

ճ ա Թագ. իե. 38։ բ Թագ. իդ. 17։
յ Սաղ. ճժե. 1։
ն Եսա. ծե. 11։ Գլ. զ. 7։ ժթ. 20։ Կող. ա. 6։
շ Գլ. ժա. 29. 30։
ո Հմր 12։
չ Գլ. ժգ. 5. 13։ ժե. 37։

## ԳԼ. ԺԳ.

1 Պօղոս ու Բառնաբաս կ'ընտրուին հեթանոսներուն երթալու։ 7 Սերգիոս Պօղոսը. և Եղիմաս մոգը։ 14 Պօղոս կը քարոզէ Անտիոքի մէջ՝ թէ Յիսուս է աշխարհի Փրկիչը։ 42 Հեթանոսները կը հաւատան. 45 բայց Հրեայք կը հակառակին և հայհոյութիւն կ'ընեն։ 46 Ասոր վրայ Պօղոս և Բառնաբաս հեթանոսներուն կը դառնան։ 48 Քրիստոնէական հաւատքը կ'ընդունին անոնք՝ որ յաւիտենական կենաց սահմանուած էին։

1 Եւ Անտիոքի մէջ եղած եկեղե-
ցիէն քանի մը մարգարէներ ու
վարդապետներ կային, Բառնա-
բաս, ու Շմաւոն՝ որ Նիգեր կ'ը-
սուէր, և Ղուկիոս Կիւրենացի,
ու Մանայէն՝ Հերովդէս չորրոր-
դապետին սննդակիցը, և Սօղոս։
2 Երբոր անոնք Տէրոջը պաշտօնին
մէջն էին՝ և ծոմ կը պահէին, Հո-
գին Սուրբ ըսաւ. Զատեցէք
ինծի Բառնաբասը և Սօղոսը ան
գործին համար, որուն ես կան-
3 չեր եմ զանոնք։ Ան ատենը ծոմ
պահելով և աղօթք ընելով, ձեռք
դրին անոնց վրայ՝ ու խրկեցին։
4 Անոնք ալ Սուրբ Հոգիէն խըր-
կուած՝ Սելևկիա իջան, ու անկէ
5 նաւով Կիպրոս գացին։ Եւ Սա-
ղամինա հասնելով՝ Հրէից ժողո-
վարաններուն մէջ Աստուծոյ խօս-
քը կը քարոզէին, ու Յովհան-
նէսն ալ իրենց սպասաւոր ունէին։
6 Եւ պտըտելով ան բոլոր կղզին
մինչև Պափոս, հոն գտան սուտ
մարգարէ՝ Հրեայ մոգ մը, որուն
7 անունը Բարյեսու էր. Որ ինքը
փոխանորդ բդեշխին հետն էր, որ
կ'ըսուէր Սերգիոս Պօղոս, խելացի
մարդ մը. ասիկայ Բառնաբասը և
Սօղոսը հրաւիրելով՝ ուզեց Աս-
8 տուծոյ խօսքը լսել։ Սակայն ա-
նոնց դէմ կեցաւ Եղիմաս մոգը,
(քանզի այսպէս կը թարգմանուի
անոր անունը,) որ կ'ուզէր փո-
խանորդ բդեշխը հաւատքէն դար-
9 ձնել։ Բայց Սօղոս՝ (որ Պօղոս

Յամ. Տ. 45

ա Գլ. ժա. 27։ ժդ. 26։ ժե. 35։
բ Գլ. ժա. 22–26։
գ Հռով. ժզ. 21։
դ Թուոց. ը. 14։ Գլ. թ. 15։ իբ. 21։ Հռով. ա. 1։ Գաղ. ա. 15։ բ. 9։
ե Մատ. թ. 38։ Գլ. ժդ. 25։ Հռով. ժ. 15։ Եփե. գ. 7. 8։ ա Տիմ. բ. 7։ բ Տիմ. ա. 11։ Եբր. ե. 4։
զ Գլ. զ. 6։
է Գլ. դ. 36։
ը Հմր 46։
թ Գլ. ժբ. 25։ ժե. 37։
ժ Գլ. ը. 9։
ի Եղ. ե. 11։ բ Տիմ. գ. 8։

ալ Պօղոս ,) Հոգւով Սրբով
լեցուած՝ աչքերը անոր վրայ տըն-
10 կեց, Ու ըսաւ. Ո՛վ ամէն խաբէ-
բայութիւնով և ամէն խորաման-
կութիւնով լեցուած Սատանայի
որդի՝ թշնամի բոլոր արդարու-
թեան , պիտի չդադարի՞ս Տէրոջը
11 շիտակ ճամբաները ծռելէն ։ Եւ
հիմա Տէրոջը ձեռքը ահա քու
վրադ է . ու կոյր պիտի ըլլաս՝
ատեն մը արևը չտեսնելով ։ Եւ
իսկոյն անոր վրայ մէգ ու խաւար
մը իջաւ . ու պտըտելով առաջ-
12 նորդ կը փնտռէր ։ Այն ատենը
փոխանորդ բդեշխը աս եղած բա-
ները որ տեսաւ՝ հաւատաց , մե-
ծապէս զարմանալով Տէրոջը վար-
դապետութեանը վրայ ։
13 Եւ Պօղոս ու իր ընկերները Պա-
փոսէն ելան , ու եկան Պամփիւ-
լիայի Պերգէն . բայց Յովհաննէս
անոնցմէ զատուելով՝ Երուսաղէմ
14 դարձաւ ։ Անոնք ալ Պերգէէն
դացին՝ ու եկան Պիսիդիայի Ան-
տիոքը , և շաբաթ օրը ժողովա-
15 րանը մտնելով՝ նստան ։ Ու օ-
րէնքը և մարգարէները կարդա-
ցուելէն ետև՝ ժողովրդապետները
մարդ խրկեցին իրենց ու ըսին .
Մարդիկ եղբայրներ՝ եթէ որ դուք
ժողովուրդին յորդորական
16 խօսք մը ունիք , խօսեցէք ։ Այն
ատենը Պօղոս ոտքի վրայ կայնե-
լով , ձեռքը շարժեց ու ըսաւ .
Ո՛վ Իսրայէլացի մարդիկ՝ և դուք
որ Աստուծմէ կը վախնաք , մտիկ
17 ըրէք ։ Աս ժողովուրդիս Աս-
տուածը մեր հայրերը ընտրեց , ու
ժողովուրդը բարձրացուց Եգիպ-
տոսի երկրին մէջ պանդխտու-
թեան ատենը , և բարձր բազու-
18 կով զանոնք անկէ հանեց ։ Ու
քառասուն տարուան ժամանակի
չափ անապատին մէջ կերակրեց
19 զանոնք ։ Եւ Քանանու երկրին
մէջ եօթը ազգ կործանելով , ա-
նոնց երկիրը իրենց տուաւ որ ժա-
20 ռանգեն ։ Եւ անկէ ետև չորս հա-
րիւր յիսուն տարիի չափ դատա-
ւորներ տուաւ անոնց մինչև Սա-
21 մուէլ մարգարէն ։ Ու ետքը
թագաւոր ուզեցին . և Աստուած
Կիսի որդին Սաւուղը տուաւ ա-
նոնց՝ Բենիամինի ցեղէն մարդ մը ,
22 քառասուն տարի ։ Ու երբոր զա-
նիկայ փոխեց , Դաւիթը հանեց
իրենց թագաւոր , որուն համար
վկայութիւն տալով՝ ըսաւ . Յես-
սէի որդին Դաւիթը գտայ իմ
սրտիս համեմատ մարդ , որ իմ բո-
23 լոր կամքս պիտի կատարէ ։ Ա-
սոր սերունդէն Աստուած իր
խոստմունքին պէս Իսրայէլին՝
24 Փրկիչ Յիսուսը հանեց . Եւ
դեռ անիկայ իր գալուստը չսկսած՝
Յովհաննէս առաջուց Իսրայէ-
լի բոլոր ժողովուրդին ապաշխա-
րութեան մկրտութիւնը քարոզեց .
25 Ու երբոր Յովհաննէս իր ընթացքը
կը կատարէր , ըսաւ . Ո՞վ կը
կարծէք թէ եմ . ես Քրիստոսը
չեմ . հապա ահա անիկայ աստ իմ ե-
տևէս կու գայ , որ ես արժանի չեմ
անոր ոտքերուն կօշիկները քակե-
26 լու ։ Մարդիկ եղբայրներ՝ Աբրա-
համի տոհմին որդիքը , ու անոնք
որ ձեր մէջը աստուածավախ են ,
աս փրկութեան խօսքը ձեզի խըր-
27 կուեցաւ ։ Քանզի Երուսաղէմ
բնակողները՝ և անոնց իշխանները
ոչ անիկայ ճանչցան , ոչ ալ մար-
գարէներուն ձայները , որ ամէն
շաբաթ օրերը կը կարդացուին .
հապա զանիկայ կատարեցին զինքը
28 դատապարտելով . Եւ մահուան
պատճառ մըն ալ չգտած՝ Պիղա-
տոսէն խնդրեցին որ անիկայ սպան-
29 նուի ։ Ու երբոր անոր համար
բոլոր գրուած բաները կատարե-
ցին , փայտէն վար իջեցընելով՝
30 գերեզմանի մէջ դրին . Բայց Աս-
տուած անիկայ յարուց մեռելնե-
րէն . որ ինքը շատ օրեր երևցաւ
31 անոնց , Որ իր հետը Գալիլեայէն
Երուսաղէմ ելեր էին . Նորոնք
հիմա անոր վկաներն են ժողովուր-
32 դին առջևը ։ Մենք ալ ձեզի կը
քարոզենք էան խոստմունքը . որ
33 հայրերուն եղած էր . Որ անիկայ
Աստուած կատարեց մեզի՝ որ անոնց
զաւակներն ենք՝ Յիսուսը յարու-
ցանելով , ինչպէս որ երկրորդ
սաղմոսին մէջն ալ գրուած է .
Դուն իմ Որդիս ես . ես այսօր
34 քեզ ծնայ ։ Եւ որ զանիկայ մե-
ռելներէն յարուց , ու մէյմըն ալ
ապականութիւն պիտի չտեսնէ ,
ասանկ կ'ըսէ թէ , Ձեզի պիտի
տամ Դաւիթին հաւատարիմ
35 սուրբ խոստմունքները ։ Ուստի ուրիշ
սաղմոսի մը մէջ ալ կ'ըսէ . Քու
Սուրբիդ ապականութիւն տեսնել
36 պիտի չտաս ։ Ինչու որ Դաւիթ իր
դարուն մէջ Աստուծոյ կամացը
ծառայելով՝ մեռաւ , ու իր հայ-
րերուն քովը դրուեցաւ , և ապա-
37 կանութիւն տեսաւ ։ Բայց ան որ
Աստուած յարուց , ապականու-
38 թիւն չտեսաւ ։ Ուրեմն յայտնի
ըլլայ ձեզի՝ մարդիկ եղբայրներ ,
որ ասոր միջոցովը ձեզի մեղաց
39 թողութիւն կը քարոզուի . Եւ ան
ամէն բաներէն՝ որ Մովսէսին օ-
րէնքովը չկրցաք արդարանալ , ա-

Ցամ Տեառն 45

ը Գղ. գ. Տ. ի Մատ. ժգ. 38. Յով. ը. 44. ա Յով. գ. 8. ժ Ել. թ. 3. ա Թագ. ե. 6. կ Գղ. ժե. 38. հ Գղ. ժզ. 13. ժէ. 2. ժը. 4. ձ Ղու. դ. 16. Հմր 27. ղ Եբր. ժգ. 22. ճ Գղ. ժբ. 17. մ Հմր 26. Գղ. ժ. 35. յ բ Օր. է. 6, 7. ն Ել. ա. 1. Սաղ. ճե. 23. 24. Գղ. է. 17. շ Ել. զ. 6. ժգ. 14. 16. ո Ել. ժզ. 35. Թուոց ժդ. 33, 34. Սաղ. ղե. 9. 10. Գղ. է. 36. չ բ Օր. է. 1. պ Յես. ժդ. 1. 2. Սաղ. հը. 55. ջ Դատ. ը. 16. ռ ա Թագ. գ. 20. ս ա Թագ. ը. 5. ժ. 1. վ ա Թագ. ժե. 23. 26. 28. ժզ. 1. Ովս. ժգ. 11. տ ա Թագ. ժզ. 13. բ Թագ. բ. 4. ե. 3. ր Սաղ. ձթ. 20. ց ա Թագ. ժգ. 14. Գղ. է. 46. ւ Ես. ժա. 1. Ղու. ա. 32, 69. Գղ. բ. 30. Հռով. ա. 3. փ բ Թագ. է. 12. Սաղ. ճլբ. 11.

Ցամ Տեառն 45

ք Մատ. ա. 21. Հռով. ժա. 26. օ Մատ. գ. 1. Ղու. գ. 3. ֆ Մատ. գ. 11. Մար. ա. 7. Ղու. գ. 16. Յով. ա. 20. 27. ա Մատ. ժ. 6. Ղու. իդ. 47. Հմր 46. Գղ. գ. 26. բ Ղու. իգ. 34. Գղ. գ. 17. ա Կոր. բ. 8. գ Հմր 14. 15. Գղ. ժե. 21. դ Ղու. իդ. 20. 44. Գղ. իզ. 22. իը. 23. ե Մատ. իէ. 22. Մար. ժե. 13. 14. Ղու. իգ. 21. 22. Յով. ժթ. 6. 15. զ Գղ. գ. 13. 14. է Ղու. ժը. 31. իդ. 44. Յով. ժթ. 28. 30. 36. 37. ը Մատ. իէ. 59. Մար. ժե. 46. Ղու. իգ. 53. Յով. ժթ. 38. թ Մատ. իը. 6. Գղ. բ. 24. գ. 13. 15. 26. ե. 30. ժ Մատ. իը. 16. Գղ. ա. 3. ա Կոր. ժե. 5. 6. 7. ի Գղ. ա. 11. լ Գղ. ա. 8. բ. 32. գ. 15. ե. 32. խ Ծն. գ. 15. ժբ. 3. իբ. 18. Գղ. իզ. 6. Հռով. դ. 13. Գաղ. գ. 16. ծ Սաղ. բ. 7. Եբր. ա. 5. ե. 5. կ Ես. ծե. 3. հ Սաղ. ժզ. 10. Գղ. բ. 31. ձ գ Թագ. բ. 10. Գղ. բ. 29. ղ Երեմ. լա. 34. Դան. թ. 24. Ղու. իդ. 47. ա Յով. բ. 12. ճ Ես. ծգ. 11. Հռով. գ. 28. ը. 3. Եբր. է. 19.

Յամ Տեառն 45

սով՝ ամէն ով որ հաւատայ, կ'ար-
40 դարանայ ։ Արդ՝ զգուշացէք որ
չըլլայ թէ ձեր վրայ գայ ան որ
մարգարէներուն մէջ ըսուած է.
41 Նայեցէք ա՛րհամարհողներ՝ և զար-
մացէք, ու ոչնչացէք. ինչու որ
գործ մը պիտի ընեմ ձեր օրերուն
մէջ, անանկ գործ մը՝ որ եթէ
մէկը ձեզի պատմէ, պիտի չհաւա-
տաք ։
42 Ու երբոր անկէ դուրս ելան,
կ'աղաչէին որ *հետևեալ շաբաթ
ալ նոյն խօսքերը իրենց խօսուի ։
43 Եւ ժողովուրդը երբոր արձակեցաւ,
Հրէաներէն ու նորահաւատ բարե-
պաշտներէն շատերը Պօղոսին ու
Բառնաբասին ետևէն կ'երթային.
որոնք կը խօսէին անոնց հետ, ու
կը յորդորէին զանոնք, որ միշտ
Աստուծոյ շնորհքին մէջը հաս-
44 տատ կենան ։ Եւ հետևեալ շաբաթ
օրը գրեթէ բոլոր քաղաքը ժող-
վուեցաւ Աստուծոյ խօսքը լսելու ։
45 Իսկ Հրէաները երբոր տեսան ան
բազմութիւնը, նախանձով լե-
ցուեցան, ու Պօղոսի զրուցածնե-
րուն դէմ կը խօսէին՝ հակառակե-
լով ու հայհոյութիւն ընելով ։
46 Ան ատենը Պօղոս և Բառնաբաս
համարձակեցան ու ըսին. Պէտք
էր որ առաջ ձեզի խօսուէր Աստու-
ծոյ խօսքը, բայց որովհետև դուք
անիկայ կը մերժէք, ու ինքզինքնիդ
յաւիտենական կենաց արժանի չէք
սեպեր, ահա մենք հեթանոսնե-
47 րուն կը դառնանք ։ Ինչու որ
Տէրը ասանկ պատուիրած է մեզի.
Քեզ հեթանոսներուն լոյս դրի,
որ դուն փրկութեան պատճառ ըլ-
48 լաս մինչև երկրի ծայրերը ։ Ա-
լսելով հեթանոսները՝ կ'ուրախա-
նային, ու Աստուծոյ խօսքը կը
փառաւորէին. և որոնք որ յաւի-
տենական կենաց սահմանուած էին,
49 հաւատացին ։ Ու Տէրոջը խօսքը
բոլոր գաւառը կը տարածուէր ։
50 Բայց Հրէաները դրդեցին բարե-
պաշտ և ազնիւ կնիկները՝ ու քա-
ղաքին մեծերը, և Պօղոսին ու
Բառնաբասին վրայ հալածանք հա-
նելով՝ զանոնք իրենց սահման-
51 ներէն դուրս ըրին ։ Անոնք ալ
իրենց ոտքերուն փոշին անոնց դէմ
52 թօթվելով՝ Իկոնիոն եկան ։ Ու
աշակերտները ուրախութեամբ և
Հոգւով Սրբով կը լեցուէին ։

Եսայ. իԹ. 14 ։ Ամբ. ա. 5 ։
*Կամ շաբթու մէջ
Գլ. ժա. 23 ։ ժդ. 21 ։
Տիտ. բ. 11 ։ Եբր. ժբ. 15 ։ Պետ. ե. 12 ։
Գլ. ժը. 6 ։ Պետ. դ. 4 ։ Յուդ. 10 ։
Մատ. ժ. 6 ։ Գլ. դ. 26 ։ Հմր 26 ։ Հռով. ա. 16 ։
Եէլ. լը. 10 ։ Օր. լ. 21 ։ Եսայ. ծե. 5 ։ Մատ. իա. 43 ։ Հռով. ժ. 19 ։
Գլ. ժը. 6 ։ իը. 28 ։
Եսայ. խբ. 6 ։ խԹ. 6 ։ Ղուկ. բ. 32 ։
Գլ. բ. 47 ։
Բ Տիմ. գ. 11 ։
Մատ. ժ. 14 ։ Մար. զ. 11 ։ Ղուկ. Թ. 5 ։ Գլ. ժը. 6 ։
Մատ. ե. 12 ։ Յովհ. ժզ. 22 ։ Գլ. բ. 46 ։

## ԳԼ. ԺԴ

1 Պօղոս և Բառնաբաս հալածուելով կը փախչին Իկոնիոնէն ։ 7 Լիւստրայի մէջ Պօղոս կը բժշկէ 'ի ծնէ կաղ մը, և սոյ պատճառով անոնք աստուածներ ըլլալ կը կարծուին ։ 19 Պօղոս կը քարկոծուի ։ 21 Անոնք զանազան եկեղեցիներ կը պտըտին, հաստատելով աշակերտները հաւատքի և համբերութեան մէջ. 26 ետքը Անտիոք դառնալով՝ կը պատմեն եղբայրներուն ո՛րչափ բան որ Աստուած ըրեր էր իրենց ։

1 Ու եղաւ որ Իկոնիոնի մէջ անոնք
մէկտեղ Հրէաներուն ժողովա-
րանը մտան, և այնպէս խօսեցան՝
որ խիստ շատ Հրէաներ և Յոյներ
2 հաւատացին ։ Բայց չհաւատացող
Հրէաները դրդեցին ու չարութեան
գրգռեցին հեթանոսներուն սիրտը
3 եղբայրներուն դէմ ։ Իսկ անոնք
շատ ժամանակ հոն կենալով՝ հա-
մարձակ կը քարոզէին Տէրոջմով,
որ իր շնորհաց խօսքին կը վկայէր,
և նշաններ ու հրաշքներ ընել կու
4 տար անոնց ձեռքովը ։ Եւ քա-
ղաքին բազմութեանը մէջ երկպա-
ռակութիւն մը եղաւ. ոմանք Հը-
րէաներուն կողմէն եղան, ոմանք
5 ալ առաքեալներուն ։ Ու երբոր
հեթանոսները և Հրէաները իրենց
իշխաններովը փորձին յարձակեցան՝
զանոնք նախատելու ու քարկո-
6 ծելու, Իրենք իմանալով՝ Լիկայո-
նացւոց քաղաքները փախան՝
Լիւստրա ու Դերբէ, և շրջակայ
տեղուանքը, ու հոն աւետարանը
կը քարոզէին ։
7 Եւ Լիւստրայի մէջ մարդ մը
նստեր էր՝ ոտքերովը տկար, իր մօրը
որովայնէն կաղ ծնած, որ բնաւ
8 քալած չէր ։ Անիկայ Պօղոսին
խօսքերը մտիկ կ'ընէր. անիկայ ալ
նայեցաւ անոր՝ և տեսնելով թէ
9 բժշկուելու հաւատք ունի, Բարձր
ձայնով մը ըսաւ. Ելի՛ր ոտքերուդ
վրայ շիտակ կայնէ. ան ալ ցաթ-
10 կելով կը քալէր ։ Եւ ժողո-
վուրդները երբոր Պօղոսին ըրածը
տեսան՝ ձայներնին վերցընելով Լի-
կայոնարէն ըսին. Աստուածները
մարդոց նմանութիւնով մեզի իջեր
11 են ։ Ու Բառնաբասին Դիոս կը
կանչէին, և Պօղոսին Հերմէս,
ինչու որ անիկայ էր գլխաւոր խօ-
12 սողը ։ Իսկ քաղաքին առջևը ե-
ղած Դիոսին քուրմը ցուլեր և
պսակներ բերելով դռներուն առ-
ջևը, բազմութեանը հետ մէկտեղ
13 կ'ուզէր որ զոհ ընէ ։ Բայց Բառ-
նաբաս ու Պօղոս առաքեալները
երբոր լսեցին, իրենց հանդերձները
պատռելով՝ դուրս ցաթկեցին բազ-
մութեանը մէջ. կ'աղաղակէին,
14 Ու կ'ըսէին. Մա՛րդիկ՝ ինչո՞ւ հա-
մար ատ բաները կ'ընէք. մենք ալ
ձեզի պէս կիրքեր ունեցող մարդիկ
ենք, ու կը քարոզենք ձեզի որ ատ
փուճ բաներէն կենդանի Աստու-
ծոյն դառնաք, որ ինքը ստեղծեց
երկինքը ու երկիրը և ծովը, ու բոլոր
15 անոնց մէջի եղածները ։ Որ ան-

Յամ Տեառն 45
Մար. ժզ. 20 ։ Եբր. բ. 4 ։
Յամ Տ. 46
Գլ. ժգ. 3 ։
Բ Տիմ. գ. 11 ։
Մատ. ժ. 23 ։
Գլ. գ. 2 ։
Մատ. ը. 10 ։ Թ. 28, 29 ։
Եսայ. լե. 6 ։
Գլ. ը. 10 ։ իը. 6 ։
Դան. բ. 46 ։
Մատ. իզ. 65 ։
Գլ. ժ. 26 ։
Յակ. ե. 17 ։ Յայտ. ժԹ. 10 ։
Ա Թագ. ժբ. 21 ։ Գ Թագ. ժզ. 13 ։ Երեմ. ժդ. 22 ։ Ամով. բ. 4 ։ Ա Կոր. ը. 4 ։
Ա Թես. ա. 9 ։
Ծն. ա. 1 ։ Սաղ. ձդ. 6 ։ Հիզ. 6 ։ Յայտ. ժդ. 7 ։
Սաղ. ձա. 12 ։ Գլ. ժէ. 30 ։ Ա Պետ. դ. 3 ։

Յամ. Տեառն 46

յ Գլ. ժէ. 27։ Հռով. ա. 20։
ղ Ղև. ժզ. 4։ բ Օր. ժա. 14։ ժը. 12։ Յոբ. ե. 10։ Սաղ. կե. 10։ կը. 9։ Ճխէ. Տ։ Երեմ. ժղ. 22։ Մատ. ե. 45։
* Ոմանք՝ մեզի
† Ոմանք՝ մեր
ճ Գլ. ժգ. 45։ մբ Կոր. ժա. 25։ բ Տիմ. գ. 11։
յ Մատ. ժը. 19։
ն Գլ. ժա. 23։ ժգ. 43։
շ Մատ. ժ. 38։ ժզ. 24։ Ղու. ժը. 25, 29։ Հռով. ը. 17։ բ Տիմ. բ. 11, 12։ գ. 12։
ո Տիտ. ա. 5։
չ Գլ. ժգ. 1, 3։
պ Գլ. ժե. 40։
ջ Գլ. ժե. 4, 12։ ժա. 19։
ռ ա Կոր. ժզ. 9։ բ Կոր. բ. 12։ Կող. դ. 3։ Յայտ. գ. 8։

ցած դարերուն մէջ թող տուաւ
ամէն ազգերուն իրենց ճամբաները
16 երթալու։ յԱյսու ամենայնիւ ինք-
զինքը առանց վկայութեան չթո-
ղուց, բարերարութիւնով ղերկին-
քէն * ձեզի անձրևներ՝ ու պտղաբեր
եղանակներ տալով, կերակուրնե-
րով և ուրախութիւնով † ձեր սիր-
17 տերը լեցընելով ։ Ու աս բաները
ըսելով՝ հազիւ կրցան ժողովուրդ-
ները դադրեցընել, որ իրենց զոհ
չընեն ։
18 Սակայն ճԱնտիոքէն ու Իկոնիո-
նէն Հրեաներ հասան, ու ժողո-
վուրդները համոզեցին, մև Պօղոսը
քարկոծեցին, ու քաղաքէն դուրս
քաշեցին՝ կարծելով թէ մեռած է ։
19 Բայց աշակերտները երբոր անոր
բոլորտիքը պատեցին, ելաւ քա-
ղաքը մտաւ . ու հետևեալ օրը
Բառնաբասին հետ մէկտեղ Դերբէ
20 ելաւ ։ Եւ անոնք ան քաղաքին
մէջ աւետարանը քարոզելով, յու-
շատերը աշակերտ ընելով՝ Լիւստ-
րա ու Իկոնիոն և Անտիոք դար-
21 ձան, Աշակերտներուն սիրտերը
հաստատելով, և նյորդորելով որ
հաստատ մնան հաւատքի մէջ . և
շկ'ըսէին, թէ շատ նեղութիւններով
պէտք է մեզի Աստուծոյ թագաւո-
22 րութիւնը մտնել ։ ոՈւ երբոր ա-
նոնց ամէն մէկ եկեղեցիին երէցներ
ձեռնադրեցին, ծոմապահութեամբ
աղօթք ընելով՝ զանոնք յանձնեցին
Տէրոջը՝ որուն հաւատացեր էին ։
23 Եւ Պիսիդիայի մէջէն պտըտելով՝
24 եկան Պամփիւլիա ։ Պերգէի մէջ
ալ Տէրոջը խօսքը խօսելէն ետև՝
25 Ատալիա իջան ։ Անկէ ալ նաւով
Անտիոք գացին, չուսկից որ պԱս-
տուծոյ շնորհքին յանձնուած էին
ան գործին համար՝ որ կատարեցին ։
26 Ու երբոր եկան, եկեղեցին մէկտեղ
ժողվելով՝ ջպատմեցին ինչ որ Աս-
տուած ըրեր էր իրենց հետ, և որ
ռհեթանոսներուն հաւատքի դուռ
27 բացեր էր ։ Ու հոն շատ ժամանակ
աշակերտներուն հետ կեցան ։

ԳԼ. ԺԵ

1 Մեծ հակառակութիւն կը ծագի թլփատու-
թեան վրայով ։ 6 Ասոր համար առաքեալնե-
րը խորհուրդ կ'ընեն, 22 և նամակ գրելով
եկեղեցիներուն, իրենց վճիռը կը ղրկեն ա-
նոնց ։ 36 Պօղոս և Բառնաբաս կը խորհին
որ մէկտեղ երթան եկեղեցիներուն այցելու-
թիւն ընելու, բայց մէջերնին վէճ մը ծագե-
լով՝ իրարմէ կը զատուին ։

ա Գաղ. բ. 12։
բ Ծն. ժէ. 10։ Ղև. ժբ. 3։
Յա. Տ. 51
գ Յով. է. 22։ Հռմ 5։ Գաղ. ե. 2։ Փիլ. գ. 2։ Կող. բ. Տ. 11. 16։
Յա. Տ. 52

1 Եւ ամէկ քանիները Հրէաստանէն
իջած՝ եղբայրներուն կը սորվե-
ցընէին՝ որ բԵթէ Մովսէսին աւան-
դած սովորութեանը համեմատ չը-
թլփատուիք, չէք կրնար փրկուիլ ։
2 Ուստի Պօղոս և Բառնաբաս ա-
նոնց դէմ շատ մը հակառակութիւն
ու վէճ ընելէն ետքը, վճռեցին որ
դՊօղոս ու Բառնաբաս և մէկ քանի-
ներն ալ անոնցմէ՝ Երուսաղէմ եր-
թան առաքեալներուն ու երէցներուն
3 աս խնդրոյս համար ։ եԱնոնք ալ
եկեղեցիէն ճամբայ դրուած՝ Փիւ-
նիկէէն ու Սամարիայէն անցնելով,
զհեթանոսաց դարձի գալը կը պատ-
մէին, և մեծ ուրախութիւն կու
4 տային բոլոր եղբայրներուն ։ Ու
երբոր Երուսաղէմ հասան, եկեղե-
ցիէն ու առաքեալներէն և երէցնե-
րէն ընդունուեցան, և էպատմեցին
ինչ որ Աստուած ըրեր էր իրենց
5 հետ ։ Փարիսեցւոց աղանդէն հա-
ւատացեալներէն ոմանք ելան՝ ու
կ'ըսէին թէ, ըՊէտք է թլփատել
անոնք, ու պատուիրել որ Մովսէսի
օրէնքը պահեն ։
6 Եւ առաքեալները ու երէցները
ժողվուեցան աս բանիս վրայով
7 խորհելու ։ Եւ շատ վիճաբանու-
թիւն ըլլալէն ետև՝ Պետրոս ոտքի
վրայ ելաւ, ու ըսաւ անոնց . թՄար-
դիկ եղբայրներ՝ դուք գիտէք որ
առջի օրերէն Աստուած ինծի ընտրեց
մեր մէջէն, որ իմ բերնովս հեթա-
նոսները աւետարանի խօսքը լսեն՝
8 ու հաւատան ։ Եւ ժսրտագէտ Աս-
տուածը վկայեց անոնց, իՀոգին
Սուրբը տալով անոնց՝ ինչպէս որ
9 մեզի ալ ։ լԵւ մէկ խտրութիւն
մը չըրաւ մեր ու անոնց մէջը, հա-
ւատքով անոնց սիրտերը խմաքրե-
10 լով ։ Ուստի հիմա ինչո՞ւ Աս-
տուած կը փորձէք, ծաշակերտնե-
րուն պարանոցին վրայ անանկ լուծ
մը դնելով, որ անիկայ ոչ մեր հայ-
րերը՝ ոչ ալ մենք կրցանք վերցը-
11 նել ։ Բայց կկը հաւատանք որ Տէր
Յիսուսի շնորհքովը կը փրկուինք
մենք, ինչպէս որ անոնք ալ ։
12 Եւ բոլոր ժողովուրդը լուռ կե-
ցաւ, ու մտիկ կ'ընէր Բառնաբա-
սին ու Պօղոսին, որոնք կը պատ-
մէին թէ Աստուած որչափ նշաններ
ու հրաշքներ ըրեր էր հհեթանոս-
13 ներուն մէջ իրենց ձեռքովը ։ Եւ
անոնք խօսքերնին կտրելէն ետև՝
ձՅակոբոս պատասխան տուաւ՝ ու
ըսաւ . Մարդիկ եղբայրներ՝ ինծի
14 մտիկ ըրէք . ղՇմաւոն պատմեց,
թէ Աստուած ինչպէս առաջ այ-
ցելութիւն ըրաւ, որ հեթանոսնե-
րէն ժողովուրդ առնէ իր անուանը
15 համար ։ Եւ աս բանիս մարգա-
րէից խօսքերն ալ կը միաբանին .
16 ինչպէս որ գրուած է . ճԱսկէ ետև
պիտի դառնամ, ու Դաւիթին ին-
կած խորանը նորէն պիտի շինեմ,
և անոր կործանուած տեղուանքը
նորէն պիտի շինեմ, և կանգնեմ

Յամ. Տեառն 52

դ Գաղ. բ. 1։
ե Հռով. ժե. 24։ ա Կոր. ժզ. 6, 11։
զ Գլ. ժդ. 26։
է Հմր 12։ Գլ. ժդ. 26։ ժա. 19։
ը Գլ. ա։
թ Գլ. ժ. 20։ ժա. 12։
ժ Ա Մն. ժը. 9։ Գլ. ա. 24։
ի Գլ. ժ. 44։
լ Հռով. ժ. 12։
խ Գլ. ժ. 15, 28, 43։ ա Կոր. ա. 2։ ա Պետ. ա. 22։
ծ Մատ. ԻԳ. 4։ Գաղ. ե. 1։
կ Հռով. գ. 24։ Եփե. բ. Տ։ Տիտ. բ. 11։ գ. 4, 5։
հ Գլ. ժդ. 26։
ձ Գլ. ժբ. 17։
ղ Հմր 7։
ճ Ամով. թ. 11. 12։

Ցամ Տեառն 52

ᶠ Տես Հռմ 28 ; յ ա Թես . ա . 9 ; ն Ծն . լե . 2 ; Ել . ի . 3 ; 23 ; Եզեկ . ի . 30 ; ա Կոր . ը . 1 ; ժ . 20 , 28 ; Յայտ . բ . 14 . 20 ; ն ա Կոր . զ . 9 , 18 ; Գաղ . ե . 19 ; Եփե . ե . 3 ; Կող . գ . 5 ; ա Թես . դ . 3 ; ա Պետ . դ . 3 ; ո Ծն . թ . 4 ; Ղև . դ . 17 ; բ Օր . ժբ . 16 , 23 ; ն Գծ . ժգ . 15 , 27 ; դ Գծ . ա . 23 ; լ Հռմ 1 ; Գաղ . բ . 4 ; ե . 12 ; Տիտ . ա . 10 , 11 ; ո Գծ . ժգ . 50 ; ժդ . 19 ; ա Կոր . ժե . 30 ; բ Կոր . ժա . 23 , 26 ; ո Հռմ 20 ; Գծ . իա . 25 ; Յայտ . բ . 14 , 20 ; ւ Ղև . ժէ . 14 ; ր Գծ . ժգ . 21 ; ժբ . 23 ;

17 անխկայ . Որ մնացած մարդիկը Տէ-
րը փնտռեն , և բոլոր հեթանոսնե-
րը՝ որոնց վրայ իմ անունս կոչուած
է , կ՚ըսէ Տէրը՝ որ այս բաները
18 կ՚ընէ ։ Յայտնի է Տէրոջը իր բոլոր
գործքերը աշխարհիս սկիզբէն հե-
19 տէ ։ Ասոր համար ᶠ ես յարմար կը
դատեմ նեղութիւն չտալ անոնց՝
որ հեթանոսներէն յ Աստուծոյ կը
20 դառնան . Հապա թուղթ մը գը-
րել անոնց՝ որ ետ կենան ն կռոց
պղծութիւններէն , և ն պոռնկու-
թենէ , ու խեղդուածէ , ո և արիւ-
21 նէ ։ Ինչու որ Մովսէս հին դարե-
րէն 'ի վեր ամէն քաղաքի մէջ զին-
քը քարոզողներ ունի , ն և ժողո-
վարաններու մէջ ամէն շաբաթ օր
կը կարդացուի ։
22 Ան ատենը առաքեալներուն ու
երէցներուն՝ բոլոր եկեղեցիին հետ
միկտեղ աղէկ երևցաւ՝ որ իրենցմէ
մարդիկ ընտրելով Անտիոք ղրկեն
Պօղոսին ու Բառնաբասին հետ ,
դ Բարսաբա մականուանեալ Յու-
դան և Շիղան՝ որոնք գլխաւոր մար-
23 դիկ էին եղբայրներուն մէջ . Ու
անոնց ձեռքովը թուղթ մը ղրկեցին
այսպէս գրուած ։
Առաքեալներ ու երէցներ և եղ-
բայրներ՝ Անտիոքի ու Սուրիայի և
Կիլիկիայի մէջ հեթանոսներէն ե-
24 ղած եղբայրներուդ ողջոյն ։ Որով-
հետև լսեցինք՝ թէ լոմանք մեր մէ-
ջէն ելլելով՝ ձեզ խօսքերով խռովե-
ցուցեր են՝ և ձեր անձերը խախտեր
են , ըսելով թէ պէտք է թլփատուիլ
ու օրէնքը պահել , որ անոնց մենք
25 այսպէս չպատուիրեցինք . Մեզի
միաբանութեամբ ժողվուածներուս
աղէկ երևցաւ , որ մարդիկ ընտ-
րելով ձեզի ղրկենք մեր սիրելինե-
րուն Բառնաբասին ու Պօղոսին
26 հետ , ո Որոնք մեր Տէր Յիսուս Քրի-
ստոսի անուանը համար անձերնին
27 մատնած մարդիկ են ։ Ուստի ղրը-
կեցինք Յուդան և Շիղան , որ
իրենք ալ բերնով նոյն բաները
28 ձեզի զրուցեն ։ Ինչու որ աղէկ
երևցաւ Սուրբ Հոգիին ու մեզի
ալ՝ ձեր վրայ աւելի բեռ չդնել ,
այս հարկաւոր բաներէս 'ի զատ ,
29 ո Որ ետ կենաք կուռքերու զոհուա-
ծէ , ւ և արիւնէ , ու խեղդուածէ ,
և պոռնկութենէ . որ այս բաներէն
ինքզինքնիդ պահելով՝ աղէկ պիտի
ընէք ։ Ողջ եղիք ։
30 Անոնք ալ ճամբայ դրուելով՝ Ան-
տիոք դացին , և ժողովուրդը մէկ-
տեղ ժողվելով՝ թուղթը տուին ։
31 Ու երբոր կարդացին , ուրախացան
32 ան մխիթարութեանը վրայ . Իսկ
Յուդա ու Շիղա՝ որ իրենք ալ
մարգարէ էին , ր շատ խօսքերով
մխիթարեցին եղբայրները՝ ու հաս-
33 տատեցին ։ Եւ ատեն մը հոն կե-
նալէն ետև՝ բ եղբայրներէն խաղա-
ղութեամբ ճամբայ դրուեցան ա-
34 ռաքեալներուն դառնալու ։ Բայց
Շիղային աղէկ երևցաւ հոն մը-
35 նալ ։ ց Պօղոս ու Բառնաբաս ալ
Անտիոքի մէջ կը կենային , և ու-
րիշ շատերու հետ Տէրոջը խօսքը
կը սորվեցնէին ու կը քարոզէին ։
36 Եւ քանի մը օրերէ ետև Պօղոս
ըսաւ Բառնաբասին . Դառնանք ու
'այցելութիւն ընենք եղբայրներուն՝
ռ ամէն մէկ քաղաքները , ուր որ Տէ-
րոջը խօսքը քարոզեցինք , և տես-
37 նենք թէ ինչպէս են ։ Իսկ Բառ-
նաբաս կ՚ուզէր որ ւ Յովհաննէսն
ալ առնեն , որ Մարկոս կ՚ըսուէր .
38 Բայց Պօղոս արժան չսեպեց որ
փ Պամփիւլիայի մէջ իրենցմէ զա-
տուողը՝ ու իրենց հետը գործի չե-
39 կողը հետերնին առնեն ։ Այսպէս
վէճերնին անմիաբանութիւն մը ե-
ղաւ , մինչև որ իրարմէ զատուե-
ցան . և Բառնաբաս առաւ Մարկո-
40 սը՝ ու նաւով Կիպրոս գնաց ։ Պօ-
ղոսն ալ Շիղան ընտրեց՝ ու ելաւ .
օ եղբայրներէն Աստուծոյ շնորհացը
41 յանձնուելով . Եւ Սուրիայի ու
Կիլիկիայի մէջ կը պտըտէր , ֆ ու
եկեղեցիները կը հաստատէր ։

Ցամ Տեառն 52

բ ա Կոր . ժզ . 11 ; Եբր . ժա . 31 ; ց Գծ . ժգ . 1 ; Յա . Տ . 53 ; ռ Գծ . ժգ . 4 , 13 . 14 , 51 ; ժդ . 1 , 6 , 23 , 24 ; ւ Գծ . ժբ . 12 ; 25 ; ժգ . 5 ; Կող . դ . 10 ; բ Տիմ . դ . 11 ; Փիլիմ . 24 ; փ Գծ . ժգ . 13 ; օ Գծ . ժդ . 25 ; ֆ Գծ . ժզ . 5 ;

## ԳԼ . ԺԶ

1 Պօղոս կը թլփատէ Տիմոթէոսը . 7 Սուրբ Հոգիին հրամանովը քաղաքները կը պտըտի . 14 Լիդիան հաւատքի կը բերէ . 16 և հարցուկ ոգի ունեցող աղախին մը կը բժշկէ ։ 19 Աս պատճառով Պօղոսը ու Շիղան կը ծեծուին , և բանտը կը դրուին ։ 26 Բանտին դռները հրաշքով կը բացուին ։ 31 Բանտապետը դարձի կու գայ . 37 և անոնք կ՚ազատուին ։

1 Եւ հասաւ ա Դերբէ ու Լիւստրա .
և ահա հոն աշակերտ մը կար
բ Տիմոթէոս անունով , գ որ հաւա-
տացեալ Հրէայ կնկան մը զաւակ
2 էր . և հայրը Յոյն էր . Որ Լիւստ-
րացի ու Իկոնացի եղբայրներէն
3 ալ դ բարի վկայուած էր ։ Պօղոս
ուզեց որ ասիկայ իր հետը ելլէ ,
ե և առաւ թլփատեց զանիկայ՝ ան
տեղուանքը եղած Հրէաներուն հա-
մար . Ինչու որ ամէնն ալ գիտէին
4 թէ անոր հայրը Յոյն էր . Ու
քաղաքներէն անցնելով , զ Երուսա-
ղէմ եղած առաքեալներէն ու ե-
րէցներէն ապսպրուած հրամաննե-
րը կ՚աւանդէին անոնց՝ որ պահեն ։
5 է Եկեղեցիներն ալ հաւատքի մէջ
կը հաստատուէին , և օրէ օր անոնց
թիւը կ՚աւելնար ։
6 Եւ Փռիւգիա ու Գաղատացւոց
կողմերը պտըտեցան , և Սուրբ
Հոգիէն արգիլուելով որ Աստուծոյ
7 խօսքը Ասիայի մէջ չխօսին . Միւ-
սիայի կողմերը որ եկան կը ջա-

ա Գծ . ժդ . 6 ; բ Գծ . ժթ . 22 ; Հռով . ժզ . 21 ; ա Կոր . դ . 17 ; Փիլ . բ . 19 ; ա Թես . գ . 2 ; ա Տիմ . ա . 2 ; բ Տիմ . ա . 2 ; գ բ Տիմ . ա . 5 ; դ Գծ . զ 3 ; ե ա Կոր . թ . 20 ; Գաղ . բ . 3 , ե . 2 ; զ Գծ . ժե . 28 29 ; է Գծ . ժե . 41 ;

Յամ Տեառն 53

նայլն դէպ 'ի Բիւթանիա՝ եր-
թալ . և *Յիսուսի Հոգին թող
8 չտուաւ անոնց ։ Եւ Միւսիայի
քովէն անցնելով՝ Տրովադա ի-
9 ջան ։ Եւ հոն գիշերը Պօղոսին
տեսիլք մը երեւցաւ . Մակեդոնա-
ցի մարդ մը կայներ կ'աղաչէր ա-
նոր՝ ու կ'ըսէր . Մակեդոնիա
10 անցիր , և օգնէ մեզի ։ Ու երբոր
ան տեսիլքը տեսաւ , շուտ մը ու-
զեցինք Մակեդոնիա ելլել , հաս-
կընալով որ Տէրը մեզ կը հրաւի-
րէ անոնց աւետարան քարոզելու ։
11 Ուստի նաւով Տրովադայէն ե-
լանք՝ ու շիտակ Սամոթրակէ գա-
ցինք , ու հետեւեալ օրը Նէապօ-
12 լիս . Եւ անկէ ալ Փիլիպպէ , որ
է Մակեդոնիայի մէկ մասին գլխա-
ւոր քաղաքը՝ †Կողոնիա . և ան
քաղաքին մէջ քանի մը օր կե-
13 ցանք . Ու շաբաթ օրը քաղաքէն
դուրս ելանք գետեզերքին քովը՝
ուր որ սովորութիւն ունէին ա-
ղօթք ընելու , ու նստելով՝ ժող-
վուած կնիկներուն կը խօսէինք ։
14 Եւ Թիւատիր քաղաքէն ծիրա-
նավաճառ կին մը՝ Լիդիա ա-
նուն , որ աստուածավախ մէկ մըն
էր , մտիկ կ'ընէր . Որուն սիրտը
Տէրը բացաւ Պօղոսին ըսածներուն
15 ուշադրութիւն ընելու ։ Ու երբոր
մկրտուեցաւ ինքը և իր տունը ,
աղաչեց ու ըսաւ . Թէ որ զիս Տէ-
րոջը հաւատացեալը կը սեպէք ,
իմ տունս մտէք բնակեցէ՛ք . Եւ
ստիպելով տարաւ մեզ ։
16 Ու եղաւ որ երբ մենք աղօթքի
կ'երթայինք , աղախին մը պատա-
հեցաւ մեզի , որ հարցուկ ոգի
ունէր , որ գուշակութիւն ընե-
լով՝ իր տէրերուն շատ վաստակ
17 կը բերէր ։ Ասիկայ Պօղոսին և
մեր ետեւէն իյնալով կը պոռար՝
ու կ'ըսէր . Աս մարդիկը Բարձ-
րեալ Աստուծոյ ծառաներն են ,
որ ‡մեզի փրկութեան ճամբան կը
18 քարոզեն ։ Եւ աս բանը շատ օրեր
կ'ընէր . իսկ Պօղոս վշտանալով՝
դարձաւ ու ըսաւ ան ոգիին . Յի-
սուս Քրիստոսի անունովը հրաման
կ'ընեմ քեզի , ելի՛ր ատկէ . Եւ նոյն
19 ժամուն ելաւ ։ Երբոր տեսան
անոր տէրերը՝ որ իրենց վաստակին
յոյսը կտրեցաւ , Պօղոսը ու Շի-
ղան բռնեցին՝ ու հրապարակը
քաշեցին իշխաններուն առջին ։
20 Եւ տարին զանոնք զօրագլուխնե-
րուն քովը՝ ու ըսին . Աս մարդիկ-
ները մեր քաղաքը իրար կ'անցը-
21 նեն . իրենք Հրէայ են , Եւ անանկ
սովորութիւններ կը քարոզեն , որ
արժան չէ մեզի ընդունիլ , ոչ ալ
ընել , ինչու որ Հռովմայեցի ենք ։

* Ոմանք՝ չասէին ։
Բ Կոր . բ . 12 ։ Բ Տիմ . դ . 13 ։
Գլ . ժ . 30 ։
Բ Կոր . բ . 13 ։
Փիլ . ա . 1 ։
† Յն՝ գաղթականաց տեղ ։
Ղու . իդ . 45 ։
Ծն . ժթ . 3 ։ լդ . 11 ։ Դատ . ժթ . 21 ։ Ղու . իդ . 29 ։ Եբր . ժգ . 2 ։
Յաթագ . իը . 7 ։
Գլ . ժթ . 24 ։
‡ Ոմանք՝ ձեզի
Տե՛ս Մար . ա . 25 , 34 ։
Մար . ժզ . 17 ։
Գլ . ժթ . 25 , 26 ։
Բ Կոր . զ . 5 ։
Մատ . ժ . 18 ։
Գ Թագ . ժը . 17 ։ Գլ . ժէ . 6 ։

22 Եւ բազմութիւնը անոնց վրայ դի-
զուեցաւ . զօրագլուխներն ալ
բռնութեամբ անոնց հանդերձները
հանեցին , և հրաման ըրին որ զա-
23 նոնք ծեծեն . Եւ անոնց շատ վէր-
քեր տալէն ետեւ՝ բանտը դրին ,
պատուիրելով բանտապետին որ
զգուշութեամբ պահէ զանոնք ։
24 Ան ալ ասանկ հրաման առնելով՝
զանոնք ներսի բանտը դրաւ , ու
ոտքերնին կոճղի մէջ ամրցուց ։
25 Եւ կէս գիշերին Պօղոս ու Շի-
ղա աղօթք կ'ընէին՝ և զԱստուած
կ'օրհնէին , ու բանտարկեալներն ալ
26 անոնց մտիկ կ'ընէին ։ Եւ յան-
կարծակի մեծ շարժ մը եղաւ , ա-
նանկ որ բանտին հիմերը սասանե-
ցան , և անմիջապէս բոլոր դռները
բացուեցան , ու ամենուն կապերը
27 արձըկուեցան ։ Եւ բանտապետը
երբոր արթնցաւ՝ ու բանտին դըռ-
ները բացուած տեսաւ , թուրը
քաշեց՝ և ինքզինքը պիտի սպան-
նէր , կարծելով թէ կապուածները
28 փախեր են ։ Բայց Պօղոս բարձր
ձայնով կանչեց ու ըսաւ . Դուն
քու անձիդ վնաս մը մի՛ ըներ , ին-
29 չու որ ամէնքս ալ հոս ենք ։ Եւ
անիկայ ճրագ մը ուզեց ու ներս
վազեց , և դողալով՝ Պօղոսին ու
30 Շիղային առջեւը ինկաւ . Եւ ա-
նոնք դուրս բերելով՝ ըսաւ . Տէ-
րեր՝ ինծի ի՞նչ պէտք է ընել , որ
31 փրկուիմ ։ Անոնք ալ ըսին . Հա-
ւատա Տէր Յիսուս Քրիստոսին ,
ու պիտի փրկուիս դուն՝ և քու
32 տունդ ։ Եւ Տէրոջը խօսքը խօսե-
ցան անոր , ու ան ամենուն՝ որ իր
33 տանը մէջն էին ։ Եւ առաւ զա-
նոնք գիշերուան նոյն ժամուն՝ ու
անոնց վէրքերը լուաց , և շուտ մը
մկրտուեցաւ ինքը ու բոլոր իրեն-
34 ները ։ Եւ զանոնք իր տունը տա-
նելով , անոնց առջեւը սեղան դրաւ ,
և բոլոր տունովը ուրախ եղաւ՝ Աս-
35 տուծոյ հաւատալով ։ Ու երբոր
առտու եղաւ , զօրագլուխները
խրկեցին սպասաւորները ու ը-
36 սին . Արձակէ ատ մարդիկը ։ Բան-
տապետն ալ ան խօսքերը Պօղոսին
պատմեց թէ , Զօրագլուխները
խրկեցին որ արձակուիք . ուստի
հիմա ելէ՛ք՝ և խաղաղութեամբ գա-
37 ցէք ։ Բայց Պօղոս ըսաւ անոնց .
Մեզ յայտնապէս ծեծելով՝ որ չը-
դատապարտուած Հռովմայեցի
մարդիկ ենք , բանտը դրին , ու
հիմա գաղտուկ կը հանեն մեզ .
ատանկ չէ , հապա թող իրենք
38 գան ու մեզ հանեն ։ Եւ սպասա-
ւորները զօրագլուխներուն պատմե-
ցին ան խօսքերը . անոնք ալ երբոր
լսեցին թէ Հռովմայեցի են , վախ-

Յամ Տեառն 53
Բ Կոր . զ . 5 ։ ժա . 23 , 25 ։ Ա Թես . բ . 2 ։
Գլ . դ . 31 ։
Գլ . ե . 19 ։ ժբ . 7 , 10 ։
Ղու . գ . 10 ։ Գլ . բ . 37 ։ թ . 6 ։
Յով . գ . 16 , 36 ։ զ . 47 ։ Ա Յով . ե . 10 ։
Ղու . ե . 29 ։ ժթ . 6 ։
Գլ . իբ . 25 ։

Ցամ Տեառն 53

ա Մատ. ը. 34։
ւ Հռմ 14։

ցամ , ու եկան քաղցրութեամբ
39 խօսեցան անոնց հետ · Եւ դուրս
հանելով՝ կ'աղաչէին որ ան քա-
40 ղաքէն երթան ։ Անոնք ալ բան-
տէն ելլելով՝ Լիդիային տունը
մտան , ու եղբայրները տեսան՝ ու
մխիթարեցին զանոնք , և գացին ։

## ԳԼ. ԺԷ

1 Պօղոս կը քարոզէ Թեսաղոնիկէի մէջ . 4 ուր ոմանք կը հաւատան , և ոմանք կը հալածեն զանիկայ ։ 10 Պօղոս Բերիա կը խրկուի , ու հոն ալ կը քարոզէ . 13 Թեսաղոնիկեցիներէն հալածուած՝ 15 Աթէնք կ'երթայ , ուր տեղ կը քարոզէ անոնց չճանչցած կենդանի Աստուածը ։ 34 Շատ մարդիկ Քրիստոսի կը հաւատան ։

ա Ղուկ. դ. 16։ Գլ. Թ. 20։ ժգ. 5։ 14։ ժդ. 1։ ժզ. 13։ ժԹ. 8։
բ Ղուկ. իդ. 26. 46։ Գլ. ժը. 28։ Գաղ. գ. 1։
գ Գլ. իը. 24։
դ Գլ. ժե. 22. 27. 32. 40։
ե Հռով. ժզ. 21։
զ Գլ. ժզ. 20։
է Ղուկ. իգ. 2։ Յով. ժԹ. 12։ Պետ. բ. 15։
ը Գլ. Թ. 25։ Հռմ 14։
Բես. լդ. 16։ Ղուկ. ժզ. 29։ Յով. ե. 39։

1 Եւ Ամփիպօլիսէն ու Ապողոնիա-
յէն պտըտելով՝ Թեսաղոնիկէ
եկան , ուր որ Հրէաները ժողո-
2 վարան մը ունէին ։ Պօղոս ալ իր
սովորութեանը պէս անոնց մէջը
մտաւ , և իրեք շաբաթ օր խօսեցաւ
3 անոնց հետ գիրքերէն , Մեկնելով
և առջևնին դնելով , թէ պէտք
էր Քրիստոսի չարչարուիլ , ու մե-
ռելներէն յարութիւն առնել , և
թէ Ան Յիսուսը որ ես ձեզի կը
քարոզեմ , ըսաւ , Քրիստոսն է ։
4 Եւ անոնցմէ ոմանք հաւատացին ,
ու Պօղոսին և Շիղային հետ մի-
ացան , աստուածավախ Յոյներէն
ալ մեծ բազմութիւն , ու երևելի
կնիկներէն ալ հատուկտորները քիչ-
5 ւոր չէին ։ Բայց չհաւատացող
Հրէաները նախանձեցան , և քանի
մը դատարկապորտ անօրէն մար-
դիկ առնելով՝ աղմուկ հանեցին ,
ու քաղաքը տակնուվրայ ըրին . և
Յասոնին տանը վրայ յարձակելով՝
կ'ուզէին զանոնք ժողովքին առջևը
6 տանիլ ։ Ու երբոր զանոնք չը-
գտան , Յասոնը ու մէկ քանի եղ-
բայրներ քաշելով տարին քաղա-
քապետներուն առջևը , կանչուըռ-
տելով՝ Թէ Անոնք որ աշխարհը
տակնուվրայ ըրին , հոս ալ հասեր
7 են . Որոնք Յասոնը ընդուներ է .
և ասոնք ամէնը կայսրին հրամա-
նացը դէմ կը գործեն , ըսելով
թէ ուրիշ Թագաւոր մը կայ Յի-
8 սուս ։ Եւ խռովեցուցին ժողովուր-
դը ու քաղաքապետները , որ աս
9 բաները կը լսէին ։ Բայց երբոր
Յասոնէն և ուրիշներէն երաշխաւո-
րութիւն առին , արձակեցին զա-
10 նոնք ։ Իսկ եղբայրները շուտ մը
գիշերով Պօղոսը և Շիղան Բերիա
խրկեցին . որոնք հոն հասնելով՝
11 Հրէից ժողովարանը գացին ։ Ա-
սոնք Թեսաղոնիկէի մէջ եղողներէն
աւելի ազնիւ մարդիկ էին , որ
Աստուծոյ խօսքը կատարեալ յօ-
ժարութեամբ ընդունեցին , և ամ-
մէն օր Գիրքերը կը քննէին՝ թէ
12 աս բաները ասա՞նկ է ։ Ուստի
անոնցմէ շատերը հաւատացին . և
պատուաւոր Յոյն կնիկներէն՝ ու
մարդիկներէն հատուկտորներն ալ
13 քիչուոր չէին ։ Բայց երբոր իմա-
ցան Թեսաղոնիկեցի Հրէաները
թէ Բերիայի մէջ ալ Աստուծոյ
խօսքը քարոզուեցաւ Պօղոսէն ,
հոն ալ եկան՝ ու ժողովուրդը
14 գրգռեցին ։ Ան ատենը եղբայր-
ները շուտ մը Պօղոսը խրկեցին՝
որ մինչև ծովեզերքը երթայ . բայց
Շիղա ու Տիմոթէոս հոն մնացին ։
15 Եւ անոնք որ Պօղոսը կը տանէին ,
մինչև Աթէնք բերին անիկայ . Եւ
իրմէն հրաման առնելով Շիղային ու
Տիմոթէոսին համար՝ որ շուտով
իրեն գան , գացին ։
16 Եւ Պօղոս Աթէնքի մէջ անոնց
սպասելով՝ իր հոգին անհանգիստ
էր ներսի դին , վասն զի քաղաքը
բոլորովին կռապաշտութեան մէջ
17 ընկղմած կը տեսնէր ։ Ուստի ժո-
ղովարանին մէջ կը խօսէր Հրէա-
ներուն ու բարեպաշտ մարդոց , և
ամէն օր հրապարակներուն մէջ ո-
18 րոնց որ պատահէր ։ Ու Եպիկու-
րեան և Ստոյիկեան փիլիսոփանե-
րէն մէկ քանիները իրեն հետ հա-
կաճառութիւն կ'ընէին . և ոմանք
կ'ըսէին . Աս սերմնաքաղը ի՞նչ
ըսել կ'ուզէ . ուրիշներն ալ կ'ըսէ-
ին . Կ'երևի թէ քանի մը օտար աս-
տուածներու քարոզիչ է . ինչու
որ Յիսուսը ու յարութիւնը կ'ա-
19 ւետարանէր անոնց ։ Եւ առին
անիկայ Արիսպագոսը տարին , ու
կ'ըսէին . Կրնա՞նք իմանալ թէ
ինչ է աս նոր վարդապետութիւ-
20 նը՝ որ դուն կը զրուցես . Քանզի
մեր ականջներուն օտար բաներ կը
բերես . ուրեմն կ'ուզենք իմանալ
21 թէ ինչ պիտի ըլլան անոնք . (Ին-
չու որ Աթենացիները ամէնն ալ ,
ու հոն կեցող օտարականները ու-
րիշ բանի չէին պարապեր , բայց
միայն նոր բան զրուցելու կամ լը-
սելու ։)
22 Ան ատենը Պօղոս Արիսպագոսին
մէջը կայնեցաւ՝ ու ըսաւ . Ով Ա-
թենացի մարդիկ՝ ամէն կողմանէ
խիստ կրօնասէր կը տեսնեմ ձեզ ։
23 Քանզի ես պտըտելով ու ձեր պաշ-
տամունքը զննելով՝ մէկ սեղան մը
գտայ , որուն վրայ գրուած էր
ԱՆԾԱՆՕԹ ԱՍՏՈՒԾՈՅՆ ․
ուստի անիկայ որ դուք չճանչնա-
լով կը պաշտէք , ես նոյնը ձեզի
24 կը քարոզեմ ։ Աստուած որ աշ-
խարհք ստեղծեց , և անոր մէջի
բոլոր բաները . անիկայ երկնից ու
երկրի Տէրը ըլլալով . ոչ ձեռա-

Ցամ Տեառն 53

Ժ Մատ. ժ. 23։
Ի Գլ. ժջ. 5։
Ցա. Տ. 54
ւր Պետ. բ. 8։
Խ Գլ. ժդ. 14։
Ծ Մատ. ժա. 25։
Կ Գլ. է. 48։

Յամ. Տեառն 54

գործ տաճարներու մէջ կը բնակի ,
25 Ո՛չ ալ մարդոց ձեռքովը կը պաշ-
տուի՝ [ա]բանի մը կարօտի պէս .
[ի]քանզի ինքը կու տայ ամենուն
26 կեանք ու շունչ՝ և ամէն բան . Ու
բոլոր մարդոց ազգերը մէկ արիւնէ
մը ըրաւ՝ որ բոլոր երկրի երեսին
վրայ բնակին . և որոշուած ժա-
մանակներ հաստատեց , [ղ]ու ա-
նոնց բնակութեան սահմանները ,
27 [ե]զԱստուած փնտռելու , Որ ըլլայ
թէ խարխափելով զինքը գտնեն .
[զ]թէպէտև մեր ամէն մէկէն ալ հե-
28 ռու չէ . Ինչու որ [է]անով կ'ապ-
րինք և կը շարժինք ու կանք ,
[ը]ինչպէս որ ձեր բանաստեղծներէն
մէկ քանիներն ալ ըսին , Քանզի
29 մենք անոր ցեղէն ալ ենք ։ Ուս-
տի՝ որովհետև Աստուծոյ ցեղէն
ենք , [ն]պէտք չէ որ անանկ սեպենք
թէ Աստուածութիւնը նման ըլլայ
ոսկիի կամ արծաթի կամ քարի ,
որ մարդուս վարպետութիւնովը
30 ու խելքովը քանդակուած է ։ Արդ՝
Աստուած [ո]տգիտութեան ատեն-
ները անտես ընելով , [չ]հիմա ամէն
տեղ կը պատուիրէ բոլոր մարդոց՝
31 որ ապաշխարեն ։ Ինչու որ ինքը
մէկ օր մը սահմանեց , [պ]որուն մէջ
աշխարհս արդարութեամբ պիտի
դատէ ան մարդուն ձեռքովը , որն
որ որոշեց , ու ամենուն հաւատա-
ցուց՝ [ջ]զանիկայ մեռելներէն յա-
րուցանելով ։
32 Երբոր մեռելներէն յարութիւնը
լսեցին , ոմանք ծաղր կ'ընէին . ո-
մանք ալ կ'ըսէին . Ատ բանիդ
համար ուրիշ անգամ մտիկ պիտի
33 ընենք քեզի ։ Եւ այսպէս Պօղոս
34 անոնց մէջէն ելաւ ։ Սակայն քա-
նի մը մարդիկ իրեն յարելով հա-
ւատացին , որոնց մէջն էր Դիոնե-
սիոս Արիսպագացին , և Դամարիս
անունով կնիկ մը , ու անոնց հետ
ուրիշներ ալ ։

[ա] Սաղ. ծ. 10—13։ [ի] Ծն. բ. 7։ Թուոց. ժզ. 22։ Յոբ. ժբ. 10։ իէ. 3։ Լգ. 4։ Ես. խբ. 5։ ծէ. 16։ Զաք. ժբ. 1։ [ղ] Բ Օր. լբ. 8։ [ե] Հռով. ա. 20։ [զ] Գլ. ժդ. 16։ [է] Կող. ա. 17։ Եբր. ա. 3։ [ը] Տիտ. ա. 12։ [ն] Ես. խ. 18։ [ո] Գլ. ժգ. 15։ Հռով. գ. 25։ [չ] Ղուկ. իդ. 47։ Տիտ. բ. 11, 12։ ա Պետ. ա 14։ գ. 3։ [պ] Գլ. ժ. 42։ Հռով. բ. 16։ ժդ. 10։ [ջ] Գլ. բ. 24։

## ԳԼ. ԺԸ

1 Պօղոս իր արհեստը կը բանի . և Կորնթոսի մէջ հեթանոսներուն կը քարոզէ ։ 9 Տէրը տեսիլքի մէջ կը քաջալերէ Պօղոսը , 12 որ կ'ամբաստանուի փոխանորդ բդեշխին՝ Գաղիոնին առջևը , բայց կ'ազատի . 18 Ետքը քաղաքէ քաղաք պտըտելով՝ աշակերտները կը հաստատէ ։ 24 Ապողոս՝ աւելի ճշդիւ սորվելով ճշմարտութիւնը Ակիւղասէն ու Պրիսկիղայէն՝ 28 զՔրիստոս կը քարոզէ մեծ ազդեցութեամբ ։

1 Ասկէ ետև Պօղոս Աթենքէն զա-
2 տուելով՝ Կորնթոս եկաւ , Եւ
մէկ Հրէայ մը գտաւ [ռ]Ակիւղաս ա-
նունով ծննդեամբ Պոնտացի , որ
իր Պրիսկիղա կնկանը հետ նոր ե-
կեր էր Իտալիայէն , ( Կղօդիոսին
հանած հրամանին համար որ բոլոր
Հրէաները Հռովմէն հեռանան . )
3 ու անոնց քովը գնաց ։ Եւ որով-
հետև ինքը արհեստակից էր՝ անոնց
քովը կեցաւ , [բ]և կը բանէր . ինչու
որ արհեստով վրանագործ էին ։
4 [գ]Ու ամէն շաբաթ օրերը ժողովարա-
նին մէջ կը խօսէր , և Հրէաները
5 ու Յոյները կը համոզէր ։ [դ]Ու երբ-
որ Շիղա և Տիմոթէոս Մակեդո-
նիայէն իջան , [ե]Պօղոսին հոգին ե-
ռանդով վառուած ըլլալով , Հը-
րէաներուն վկայութիւնով կը
հաստատէր՝ թէ Յիսուսը Քրիս-
6 տոսն է ։ [զ]Անոնք ալ երբոր դէմ կե-
ցան ու կը հայհոյէին , [է]ինքը հան-
դերձները թօթվելով՝ ըսաւ անոնց .
[ը]Ձեր արիւնը ձեր գլուխը , [թ]ես ան-
պարտ եմ , [ժ]ասկէ ետև հեթանոս-
7 ներուն պիտի երթամ ։ Եւ անկէ
երթալով՝ մտաւ մէկու մը տուն ,
որուն անունը [ի]Յուստոս էր՝ աս-
տուածավախ մարդ մը , որուն տունը
8 ժողովարանին կից էր ։ [լ]Եւ ժո-
ղովրդապետը Կրիսպոս իր բոլոր
տունովը հաւատաց Տէրոջը . և
Կորնթացիներէն շատերը լսելով՝
9 հաւատացին ու մկրտուեցան ։ Եւ
գիշերը տեսիլքի մէջ [խ]Տէրը ըսաւ
Պօղոսին . Մի՛ վախնար՝ հապա
10 խօսէ՛ , և լուռ մի՛ կենար , [ծ]Ինչու
որ ես քեզի հետ եմ , և մէկը քեզի
դէմ պիտի չելլէ՝ քեզի վնաս մը
հասցընելու . քանզի աս քաղաքիս
մէջ ես շատ ժողովուրդ ունիմ ։
11 Եւ հոն տարի մը ու վեց ամիս կե-
ցաւ , ու Աստուծոյ խօսքը անոնց
մէջ կը սորվեցընէր ։
12 Եւ Աքայիայի փոխանորդ բը-
դեշխին Գաղիոնին օրերը Հրէայք
միաբանելով՝ Պօղոսին դէմ ելան ,
13 և զանիկայ ատեանը տարին , ըսե-
լով թէ , Ասիկայ կը հրապուրէ
մարդիկը օրէնքէն դուրս Աստուած
14 պաշտելու ։ Ու երբոր Պօղոս իր
բերանը բանալու պատրաստ էր ,
Գաղիոն ըսաւ Հրէաներուն . [կ]Թէ
որ անիրաւութեան մը կամ չար
գործքի մը համար ըլլար՝ ո՛վ Հը-
րէաներ , արժան էր ինծի՝ որ ձեզի
15 մտիկ ընէի ։ Բայց թէ որ վէճը
խօսքի՝ ու անուններու՝ և ձեր օրէն-
քին վրայով է , դուք ձեզմէն տե-
սէք . ինչու որ ես ատանկ բաներու
16 դատաւոր ըլլալ չեմ ուզեր ։ Եւ
17 զանոնք ատեանէն վռընտեց ։ Ան
ատենը բոլոր Յոյները [հ]Սոսթենէս
ժողովրդապետը բռնեցին՝ ու ա-
տեանին առջևը կը ծեծէին . և աս
բաներուս վրայով Գաղիոն բնաւ
հոգ չէր ըներ ։
18 Պօղոս ալ տակաւին խել մը օ-
րեր հոն մնալէն ետքը՝ եղբայրներէն
հրաժարելով , նաւով դէպ 'ի Սիւ-
րիա գնաց . ու իր հետն ալ Պրիս-

[ռ] Հռով. ժզ. 3։ ա Կոր. ժզ. 19։ բ Տիմ. դ. 19։

Յամ. Տեառն 54

[բ] Գլ. ի. 34։ ա Կոր. դ. 12։ ա Թես. բ 9։ բ Թես. գ. 8։ [գ] Գլ. ժէ. 2։ [դ] Գլ. ժէ. 14, 15։ [ե] Յոբ. լբ. 18։ Գլ. ժէ. 3։ Հմր 28։ [զ] Գլ. ժգ. 45։ ա Պետ. դ. 4։ [է] Նեեմ. ե. 13։ Մատ. ժ. 14։ Գլ. ժգ. 51։ [ը] Ղև. ի. 9, 11, 12։ բ Թագ. ա. 16։ Եզեկ. ժը. 13։ լգ. 4։ [թ] Եզեկ. գ. 18, 19։ լգ. 9։ Գլ. ի. 26։ [ժ] Գլ. ժգ. 46։ իը. 28։ [ի] Ոմանք՝ Տիտոս Յուստոս [լ] ա Կոր. ա. 14։ [խ] Գլ. իգ. 11։ [ծ] Երեմ. ա. 18, 19։ Մատ. իը. 20։

Յամ. Տ. 55 վերջը։

[կ] Գլ. իգ. 29։ իե. 11, 19։ [հ] ա Կոր. ա. 1։

Ցամ Տեառն 55

կիղան և Ակիւղասը , —— ^Կենքրայի մէջ իր գլուխը փորրած , ին-
բայի մէջ ³ իր գլուխը փորրած , ին-
19 չու որ ուխտաւոր էր ։ Ու Եփեսոս
որ հասաւ , անոնք հոն ձգեց , և
ինքը ՝ ժողովարանը մտնելով Հը-
20 րէաներուն հետ կը խօսէր ։ Եւ
իրեն կ՚աղաչէին՝ որ ալ աւելի ժա-
մանակ իրենց քովը մնայ . բայց
21 յանձնառու չեղաւ . Հապա հրա-
ժարեցաւ անոնցմէ ըսելով . ^Պէտք
է որ անպատճառ աս առաջիկայ
տօնը Երուսաղէմի մէջ ընեմ .
բայց" ՚Աստուծոյ կամքովը նորէն
ձեզի կը դառնամ . ու Եփեսոսէն
22 նաւով ճամբայ ելաւ . Եւ Կեսարիա
հասնելով՝ Երուսաղէմ ելաւ , ու
եկեղեցիին բարև տուաւ , ու Անտ-
23 իոք իջաւ . Եւ հոն քանի մը ատեն
կենալէն ետև՝ ելաւ , ու կարգով
ᶠԳաղատացւոց երկիրը և Փռիւգիա
կը պտըտէր , ու ᶠբոլոր աշակերտ-
ները կը հաստատէր ։
24 Եւ Ապողոս անունով ᶠՀրէայ մը ,
ծննդեամբ Աղեքսանդրացի՝ ճար-
տասան մարդ մը՝ եկաւ հասաւ Ե-
փեսոս . որ ինքը զօրաւոր էր Սուրբ
25 գիրքերով ։ Ասիկայ Տէրոջը ճամ-
բուն մէջ վարժուած էր , ^և ջերմ-
եռանդ հոգի ունենալով , կը խօ-
սէր ու կը սորվեցընէր ճշդութեամբ
Տէրոջը վրայով . բայց ^միայն
Յովհաննէսին մկրտութիւնը գի-
26 տէր ։ Ասիկայ սկսաւ ժողովարա-
նին մէջ համարձակ խօսիլ . ու
երբոր Ակիւղաս ու Պրիսկիղա լսե-
ցին անկէ , ալ զանիկայ իրենց քո-
վը առին , և աւելի ճշդիւ Աստուծոյ
27 ճամբան անոր հասկըցուցին ։ Ու
երբոր անիկայ ուզեց Աքայիա եր-
թալ , եղբայրները քաջալերեցին
զանիկայ , ու գիր գրեցին որ իրեն
աշակերտներուն՝ որ զանիկայ ըն-
դունին . որ հոն հասնելով ^շատ
օգտակար եղաւ շնորհքով հաւա-
28 տացեալներուն . Քանզի հրապա-
րակաւ սաստիկ կը յանդիմանէր
Հրէաները , ^սուրբ գիրքերէն ցու-
ցընելով թէ Յիսուսը Քրիստոսն
է ։

Ա Հռով. ԺԶ. 1։ Ա Թուոց. Զ. 18։ Գլ. ԻԱ. 24։ * Ոմանք չունին ։ Ա Կոր. Դ. 19։ Եբր. Զ. 3։ Յակ. Դ. 15։ Յա. Տ. 56 Գաղ. Ա. 2։ Դ. 14։ Գլ. ԺԴ. 21։ ԺԵ. 32. 41։ Ա Կոր. Ա. 12։ Գ. 5. 6։ Դ. 6։ Տիտ. Գ. 13։ Հռով. ԺԲ. 11։ Գլ. ԺԹ. 3։ Ա Կոր. Գ. 6։ Գլ. Թ. 22։ ԺԷ. 3։ Հմր 5։

ԳԼ. ԺԹ

1 Սուրբ Հոգին կը տրուի հաւատացեալներուն՝ Պօղոսին ձեռօքը ։ 9 Հրէայք կը հայհոյեն Պօղոսի վարդապետութիւնը՝ որ հրաշքներով կը հաստատուի ։ 13 Երդմնեցուցիչ Հրէայք 16 ծեծ կ՚ուտեն դիւահարէն ։ 19 Կախարդական գրքերը կ՚այրուին ։ 24 Դեմետրիոս իր արծաթագործութեամբը մեծ աղմուկ կը հանէ Պօղոսին դէմ , 35 որն որ ատենադպիրը կը հանդարտեցընէ ։

1 Եւ քանի որ ^Ապողոս Կորնթոսի
մէջ էր , Պօղոս վերի կողմերը
պտըտելով՝ Եփեսոս եկաւ . և քա-
2 նի մը աշակերտներ գտնելով , ը-
սաւ անոնց . Երբոր հաւատացիք՝

Ա Կոր. Ա. 12։ Գ. 5. 6։

Սուրբ Հոգին առի՞ք արդեօք . ա-
նոնք ալ ըսին իրեն . ^Բայց մենք
լսած ալ չենք թէ Սուրբ Հոգի
3 կայ ։ Եւ ըսաւ անոնց . Հապա
ինչո՞վ մկրտուեցաք . անոնք ալ ը-
սին . ^Յովհաննէսին մկրտութիւ-
4 նովը ։ Պօղոս ալ ըսաւ . ^Յով-
հաննէս ապաշխարութեան մկրտու-
թիւնով մկրտեց , ժողովուրդին ը-
սելով , թէ ան որ իրմէ ետքը պի-
տի գայ՝ անոր հաւատան , այսինքն՝
5 Քրիստոս Յիսուսին ։ Ու երբոր
ասոնք լսեցին , ^Տէր Յիսուսի անու-
6 նովը մկրտուեցան ։ Եւ Պօղոս
երբոր ^անոնց վրայ ձեռք դրաւ ,
Սուրբ Հոգին անոնց վրայ եկաւ ,
^և լեզուներ կը խօսէին ու կը մար-
7 գարէանային ։ Եւ ան բոլոր մար-
դիկը տասներկուքի չափ էին ։
8 ^Ու ժողովարանը մտնելով՝ իրեք ա-
միս համարձակութեամբ ^Աստու-
ծոյ թագաւորութեանը վրայով կը
9 խօսէր , ու կը համոզէր ։ ^Իսկ
երբոր մէկ քանիները կը յամառէ-
ին՝ ու դէմ կը դնէին բազմութեան
առջևը էան ճամբան բամբասելով ,
ինքը անոնցմէ հեռացաւ , և աշա-
կերտները զատեց , ու ամէն օր
Տիւրան անուն մէկու մը դպրատա-
10 նը մէջ կը խօսէր ։ ^Եւ աս երկու
տարի քաշեց՝ մինչև որ բոլոր Ասիայի
մէջ բնակող Հրէաները ու Յոյ-
11 ները ^Տէրոջը խօսքը լսեցին ։ Եւ
Աստուած նշանաւոր հրաշքներ կ՚ը-
12 նէր Պօղոսին ձեռքովը . ^Անանկ որ
անոր մարմինէն թաշկինակներ ու
գոգնոցներ կը տանէին հիւանդնե-
րուն , և իրենց ցաւերէն կը ժըռչ-
կուէին , ու չար ոգիները կ՚ելլէին ։
13 ^Բայց աստանդական Հրէաներէն
մէկ քանիները՝ որ երդմնեցուցիչ
էին , ^յանդգնեցան Տէր Յիսուսի
անունը կանչել անոնց վրայ՝ որոնք
չար ոգիներ ունէին , և կ՚ըսէին ,
Ձեզ կ՚երդմնցընենք Յիսուսով ,
14 որն որ Պօղոս կը քարոզէ ։ Եւ
աս բանը ընողները Սկևա ըսուած
Հրէայ քահանայապետի մը եօթը
15 որդիքն էին ։ Իսկ չար ոգին պա-
տասխան տուաւ՝ ու ըսաւ . Յի-
սուսը կը ճանչնամ՝ ու Պօղոսը գի-
16 տեմ , բայց դուք ո՞վ էք ։ Եւ
ան մարդը որուն ներսի ոգին էր չար
ոգին , անոնց վրայ ցատկելով՝
բռնեց զանոնք ու յաղթեց , մինչև
որ ան տունէն մերկ ու վիրաւո-
17 րուած դուրս փախան ։ Եւ աս
բանը Եփեսոսի մէջ բնակող բոլոր
Հրէաներուն ու Յոյներուն յայտնի
եղաւ . ^և անոնց ամէնուն վրայ
վախ մը ինկաւ , ու Տէր Յիսուսի
18 անունը կը մեծարուէր ։ Եւ հա-
ւատացեալներէն շատերը կու գա-

Ցամ Տեառն 56

Բ Գլ. Ը. 16։ Տես և Թուղթ. Դ. 7։ Գլ. ԺԸ. 25։ Մատ. Գ. 11։ Յովհ. Ա. 15. 27. 30։ Գլ. Ա. 5։ ԺԱ. 16։ ԺԳ. 24. 25։ Գլ. Ը. 16։ Գլ. Զ. 6։ Ը. 17։ Գլ. Բ. 4։ Ժ. 46։ Գլ. ԺԷ. 2։ ԺԸ. 4։ Բ Գլ. Ա. 3։ ԻԲ. 23։ Յա. Տ. 57 ԺԸ Տիմ. Ա. 15։ Բ Պետ. Բ. 2։ Յուդ. 10։ Տես Գլ. Թ. 2։ ԻԲ. 4։ ԻԴ. 14։ Հմր 23։ Տես Գլ. Ի. 31։ Ոմանք՝ Տէր Յիսուսի Մարկ. ԺԶ. 20։ Գլ. ԺԴ. 3։ Գլ. Ե. 15։ Տես Թուղթ. Դ. 29։ Յա. Տ. 58 Մատ. ԺԲ. 27։ Տես Մարկ. Թ. 38։ Ղուկ. Թ. 49։ Ղուկ. Ա. 65։ Է. 16։ Գլ. Բ. 43։ Ե. 5. 11։

Յամ Տեառն 58

Հմ. Ա. գ. 6։

յին, Շատ կը խոստովանէին ու կը
19 պատմէին իրենց ըրածները ։ Եւ
կախարդութեան հետեւողներուն
շատերը գիրքերնին մէկտեղ բերե-
լով ամենուն առջեւ կ'այրէին. և
անոնց գինը հաշուեցին. ու յիսուն
հազար արծաթ դահեկան գտան.
20 Այսպէս Տէրոջը խօսքը մեծապէս
կ'աճէր և կը զօրանար ։

Գտ. զ. 7. ժբ. 24.

Յա. Տ. 59

Գտ. ի. 22.

Հռով. ժե. 25. Գաղ. բ. 1.

Գտ. իդ. 11. Հռով. ժե. 24—28.

Գտ. ժգ. 5

Հռով. ժզ. 23. բ Տիմ. դ. 20.

բ Կոր. ա. 8.

Տես գլ. թ. 2.

Գտ. ժզ. 16. 19.

21 Ու երբոր աս բաները լմնցան.
Պօղոս միտքը դրաւ որ Մակեդո-
նիայէն ու Աքայիայէն պտըտելով
Երուսաղէմ երթայ. ու կ'ըսէր
թէ. Հոն երթալէս ետքը պէտք է
22 ինծի որ Հռովմ ալ տեսնեմ ։ Եւ
իրեն սպասաւորութիւն ընողներէն
երկուքը՝ Տիմոթէոսը ու Երաս-
տոսը խրկեց Մակեդոնիա, ու ինքը
ատեն մըն ալ Ասիայի մէջ կեցաւ.
23 Եւ նոյն ատենները շատ խռովու-
թիւն եղաւ Տէրոջը ճամբուն
24 համար. Քանզի Դեմետրիոս անու-
նով արծաթագործ մը՝ Արտեմիսին
փոքրիկ տաճարներ կը շինէր ար-
ծաթէ, Ու քիչ շահ չէր բերեր
25 վարպետներուն. Որոնք ասիկայ
մէկտեղ ժողվեց նոյն արհեստին
բանուորներուն հետ, ու ըսաւ.
Մարդիկ դուք գիտէք որ աս գոր-
26 ծէս է մեր շահը. Եւ կը տեսնէք
ու կը լսէք որ աս Պօղոսը չէ թէ
միայն Եփեսացւոց, հապա գրեթէ
բոլոր Ասիացւոց շատ ժողովուրդ-
ները համոզելով՝ միտքերնին դար-
ձուց ըսելով թէ՝ Ձեռքով շի-
նուածները աստուածներ չեն.
27 Ուստի վտանգ կայ որ չէ թէ միայն
աս մեր կողմը պիտի նախատուի,
հապա մեծ աստուածուհւոյն Ար-
տեմիսին տաճարն ալ ոչինչ պիտի
սեպուի. և անոր մեծափառու-
թիւնը պիտի խափանուի, որն որ
բոլոր Ասիա ու աշխարհք կը պաշ-
28 տեն. Ու երբոր աս լսեցին, բար-
կութեամբ լեցուած կը կանչըռը-
տէին ու կ'ըսէին. Մեծ է Եփե-
29 սացւոց Արտեմիսը ։ Եւ բոլոր քա-
ղաքը խռովութեամբ լեցուեցաւ.
և յափշտակելով Գայիոս ու Ա-
րիստարքոս Մակեդոնացիները Պօ-
ղոսին ճանապարհորդակիցները.
ամէնը մէկէն թէատրոնը վազեցին.
30 Իսկ Պօղոս երբոր ուզեց ժողովուր-
դին մէջը մտնել, աշակերտները
31 թող չտուին զինքը. Ասիապետ-
ներէն ալ ոմանք որ իր բարեկամ-
ներն էին. մարդ խրկելով իրեն
կ'աղաչէին որ չհամարձակի թէ-
32 ատրոնը երթալու. Ուստի մէկը
մէկ կերպ ու մէկալը ուրիշ կերպ
բան կը կանչըռտէին. ինչու որ
ժողովքը շփոթութեան մէջ էր և
շատերը չէին գիտեր թէ ինչ բանի

Սաղ. ճժե. 4. Ես. խդ. 10—20. Երեմ. ժ. 3.

Կամ արհեստը

Հռով. ժզ. 23. ա Կոր. ա 14.

Գտ. ի. 4. իէ. 2. Կող. դ. 10. Փիլիմ 24.

33 համար ժողվուած են ։ Եւ բազ-
մութեանը մէջէն առաջ բերին
Աղեքսանդրոսը, որն որ Հրեայք ա-
ռաջ քշեցին. Աղեքսանդրոս ալ
ձեռքը շարժելով՝ կ'ուզէր որ ժո-
34 ղովուրդին պատասխան տայ ։ Իսկ
երբոր գիտցան թէ անիկայ Հրեայ
է, ամէնքը մէկ բերան եղած՝ երկու
ժամու չափ կը կանչըռտէին թէ,
Մեծ է Եփեսացւոց Արտեմիսը ։
35 Սակայն ատենադպիրը բազմու-
թիւնը հանդարտեցընելով ըսաւ.
Ով Եփեսացի մարդիկ՝ ո՞ր մարդն
է որ չգիտնայ թէ Եփեսացւոց
քաղաքը՝ մեծ Արտեմիսին և Դիո-
սէն ինկած կուռքին տաճարին
36 պաշտօնեան է ։ Ուրեմն աս որ
անվիճելի բան մըն է, պէտք է ձեզի
հանդարտ կենալ, և յանդգնու-
37 թեամբ բան մը չընել ։ Քանզի
դուք աս մարդիկը հոս բերիք.
որոնք ոչ տաճար կողոպտողներ
են, ոչ ալ ձեր աստուածուհւոյն
38 հայհոյանք ըրեր են ։ Ուստի թէ
որ Դեմետրիոս և իր հետը եղած
վարպետները մէկու մը հետ բան մը
ունին, ատեանը բաց է, ու փո-
խանորդ բդեշխ կայ, թող իրարու
դէմ ամբաստանութիւն ընեն.
39 Հապա թէ որ ուրիշ բաներու
համար է ձեր պահանջմունքը,
օրինաւոր ժողովքի մէջ թող որո-
40 շուի ։ Ինչու որ մենք ալ աս
օրուան եղածին համար իբրև խռո-
վայոյզ մարդիկ ամբաստանուելու
վտանգի մէջ ենք. քանզի պատճառ
մը չկայ որով կարող ըլլանք աս
խուռնամբոխ բազմութեանը հա-
մար պատասխան տալ. Եւ ա-
սանկ ըսելով՝ ժողովքը արձակեց ։

Յամ Տեառն 59

ա Տիմ. ա. 20. բ Տիմ. դ. 14.

Գտ. ժբ. 17.

ԳԼ. Ի

1 Պօղոս Մակեդոնիա կ'երթայ. 7 Տէրունական ընթրիքը կը կատարէ. ու կը քարոզէ ։ 9 Եւտիքոս վար իյնալով կը մեռնի, 10 և Պօղոս կը յարուցանէ զանիկայ ։ 17 Պօղոս Միլիտոսի մէջ ժողվելով երէցները կը զգուշացնէ անոնց՝ իրեն պատահելու անցքերը. 28 կը պատուիրէ անոնց՝ Աստուծոյ հօտին հոգ տանիլ 29 ու կը զգուշացընէ խաբեբայ վարդապետներէն. 32 ապա զանոնք Աստուծոյ յանձնելով՝ 36 աղօթք կ'ընէ անոնց հետը, ու կը մեկնի.

1 Եւ աղմուկը դադարելէն ետև Պօ-
ղոս աշակերտները իրեն կան-
չեց ու հրաժարական ողջոյն տա-
լով ելաւ որ Մակեդոնիա եր-
2 թայ. Եւ ան կողմերը պտըտելէն
ու շատ խօսքերով անոնք միխիթա-
3 րելէն ետև Ելլադա եկաւ. Եւ հոն
իրեք ամիս կենալէն ետքը Հրեա-
ները իրեն դէմ նենգութեան խոր-
հուրդ ըրին՝ երբոր կ'ուզէր Սուրիա
ելլել. անոր համար որոշեց Մա-
4 կեդոնիայի վրայէն դառնալ. Ու-

ա Կոր. ժդ. 5. ա Տիմ. ա. 3.

Յա. Տ. 60

Գտ. թ. 23. իգ. 12. իե. 3. բ Կոր. ժա. 26.

Ցամք Տեառն
60

* Ոմանք չունին ։
գ Գլ. ժԹ. 29 ։ իէ. 2 ։ Կող. դ. 10 ։
դ Գլ. ժԹ. 29 ։
ե Գլ. ժզ. 1 ։
զ Եփե. զ. 21 ։ Կող. դ. 7 ։ բ Տիմ. դ. 12 ։ Տիտ. գ. 12 ։
է Գլ. իա. 29 ։ բ Տիմ. դ. 20 ։
ը Ել. ժբ. 14 ։ 15 ։ իգ. 15 ։
Թ Գլ. ժզ. 8 ։ բ Կոր. բ. 12 ։ բ Տիմ. դ. 13 ։
ժ ա Կոր. ժզ. 2 ։ Յայտ. ա. 16 ։
ի Գլ. բ. 42, 46 ։ ա Կոր. ժ. 16 ։ ժա. 20 ։
լ Գլ. ա. 13 ։
խ գ Թագ. ժէ. 21 ։ դ Թագ. դ. 34 ։
ծ Մատ. Թ. 24 ։
կ Գլ. ժԹ. 21 ։ իա. 4, 12 ։
հ Գլ. բ. 1 ։ ա Կոր. ժզ. 8 ։
ձ Գլ. իդ. 17 ։
ղ Գլ. ժբ. 19 ։ ժԹ. 1, 10 ։

մինչև Ասիա իր հետը կ'երԹար
Բերիացի * Պիւռոսի որդին՝ Սոպատ-
րոսը, և Թեսաղոնիկեցիներէն գԱ-
րիստարքոսը ու Սեկունդոսը, և
դԳայիոս Դերբացին ու եՏիմո-
Թէոսը, և Ասիացի զՏիւքիկոսը
5 ու էՏրոփիմոսը ։ Ասոնք առաջ
գացին ու Տրովադայի մէջ մեզի կը
6 սպասէին ։ Մենք ալ ըԲաղարջա-
կերաց օրերէն ետև Փիլիպպէէն
նաւեցինք. և հինգ օրուան մէջ
Թ Տրովադա եկանք անոնց քովը,
ու հոն եօԹը օր կեցանք ։
7 ժ Եւ մէկշաբԹի օրը երբոր ժող-
վուեր էինք ի հաց կտրելու, Պօղոս
անոնց կը քարոզէր, ինչու որ հե-
տևեալ օրը ճամբայ պիտի ելլէր.
և խօսքը երկընցուց մինչև կէս գի-
8 շեր ։ Ու շատ լապտերներ կային
լ ան վերի սենեակը՝ ուր որ մենք
9 ժողվուած էինք ։ Եւ մէկ երիտա-
սարդ մը Եւտիքոս անուն՝ պատու-
հանին վրայ նստած՝ խորունկ քնոյ
մէջ մտեր էր. երբոր Պօղոս խօսքը
երկընցուց, անիկայ խորունկ քնով
բռնուած՝ երրորդ դստիկոնէն վար
ինկաւ, ու զանիկայ մեռած վեր-
10 ցուցին ։ Եւ Պօղոս վար իջնելով՝
խ անոր վրայ ինկաւ, ու գրկեց զա-
նիկայ՝ ու կ'ըսէր. ծՄի խռովիք,
ինչու որ ասոր հոգին իր մէջն է ։
11 Եւ վեր ելլելով՝ հացը կտրեց ու
կերաւ. ու երկար խօսելով մինչև
12 առտու, ետքը ելաւ գնաց ։ Եւ
ան պատանին ողջ բերին, ու մե-
13 ծապէս մխիԹարուեցան ։ Իսկ մենք
նաւը մտնելով՝ ճամբայ ելանք դէպ
'ի Ասոն, որ անկէ Պօղոսը պիտի
առնէինք. ինչու որ անանկ ապսպ-
րեր էր, որովհետև ինքը ցամա-
14 քով պիտի երԹար ։ Ու երբոր Ա-
սոնի մէջ մեզի հանդիպեցաւ, ա-
ռինք անիկայ և Միտիլինէ եկանք ։
15 Անկէ ալ նաւելով՝ հետևեալ օրը
Քիոսին դիմացը հասանք. և մէ-
կալ օրը Սամոս հասանք. ու կեցանք
Տրոգիլիոն կենալով՝ միւս օրը Մե-
16 լիտոս եկանք. Ինչու որ Պօղոս
միտքը դրեր էր որ նաւով անցնի
Եփեսոսին քովէն, որ չըլլայ Թէ
Ասիայի մէջ ժամանակ անցրնէ,
որովհետև կ կ'արտորար՝ որ եԹէ
կարելի է իրեն, հ Պենտեկոստէին
օրը ձ Երուսաղէմ ըլլայ ։
17 Եւ Միլիտոսէն մարդ խրկեց Ե-
փեսոս՝ ու եկեղեցիին երէցները
18 կանչեց ։ Ու երբոր իրեն եկան, ը-
սաւ անոնց. Դուք գիտէք ղոր ան
առջի օրէն հետէ որ ես Ասիա եկայ,
ինտոր ձեր հետը վարուեցայ բոլոր
19 ժամանակը. Ամէն խոնարհուԹիւ-
նով Տէրոջը ծառայելով, և շատ
արցունքով ու փորձուԹիւններով,
ճ որ Հրէից նենգուԹիւններէն ինծի
20 պատահեցան. մ Ինտոր վախնալով
ես չկեցայ օգտակար բաներուն ը-
նաւ մէկը ձեզի զրուցելէն, ու ձեզի
հրապարակաւ և տան մէջ սորվե-
21 ցընելէն. յ Վկայութիւն տալով
Հրէից և Յունաց ալ՝ ն դէպ 'ի
Աստուած ապաշխարուԹեան հա-
մար, ու մեր Տէր Յիսուս Քրիստո-
սին վրայ եղած հաւատքին համար ։
22 Եւ հիմա՝ շահ ես հոգւով կա-
պուած՝ Երուսաղէմ կ'երԹամ, և
հոն ինչ որ ինծի պիտի պատահի՝
23 չեմ գիտեր. Միայն Թէ ո Հոգին
Սուրբ ամէն քաղաքի մէջ ինծի կը
վկայէ ու կ'ըսէ Թէ՝ կապեր ու
նեղուԹիւններ ինծի կը սպասեն ։
24 չ Բայց ես բանի մը համար հոգ չեմ
ըներ, և իմ անձս պատուական չեմ
սեպեր, պ միայն Թէ իմ ընԹացքս
ուրախուԹեամբ կատարեմ, ջ և ան
պաշտօնը՝ ռ որ Տէր Յիսուսէն առի՝
Աստուծոյ շնորհացը աւետարանին
25 վկայ ըլլալու ։ Եւ հիմա ահա ս ես
գիտեմ որ ալ իմ երեսս պիտի չը-
տեսնէք դուք ամէնքդ, որ մէջեր-
նիդ պտըտեցայ Աստուծոյ Թագա-
26 ւորուԹիւնը քարոզելով ։ Ուստի
այս օրս կը վկայեմ ձեզի, որ ես
վ անպարտ եմ ամենուն արիւնէն.
27 Ինչու որ տ ես չկեցայ ր Աստուծոյ
բոլոր կամքը ձեզի յայտնելէն ։
28 ց Ուրեմն զգուշացէք ձեր անձերուն
և բոլոր հօտին, որուն վրայ Հոգին
Սուրբ * ձեզ տեսուչ դրաւ՝ † Աս-
տուծոյ եկեղեցին հովուելու, որն
29 որ ‡ իր արիւնովը + ստացաւ ։ Քան-
զի գիտեմ որ իմ զատուելէս ետքը
ձեր մէջը ° ‡ յափշտակող գայլեր պի-
տի մտնեն, որ պիտի չխնայեն հօ-
30 տին ։ Եւ § ձեզմէ ալ ոմանք մարդիկ
պիտի ելլեն՝ որ ծուռ բաներ պիտի
խօսին, աշակերտները իրենց ետևէն
31 քաշելու համար ։ Ուստի արԹուն
կեցէք, և միտքերնիդ բերէք՝ ա որ
իրեք տարի գիշեր ու ցորեկ չդադա-
րեցայ ամէն մէկը արցունքով խրա-
32 տելէն ։ Եւ հիմա եղբայրներ՝ կը
յանձնեմ ձեզ Աստուծոյ, ու բ ա-
նոր շնորհացը խօսքին, որ կարող է
գ շինելու՝ ու դ բոլոր սրբուածներուն
հետ ձեզի ժառանգուԹիւն տալու ։
33 ե Մէկու մը արծաԹին՝ կամ ոս-
կիին՝ կամ հագուստին չցանկացայ.
34 Դուք ձեզմէ գիտէք՝ որ ինծի և իմ
հետս եղողներուն պէտք եղածը
35 զաս ձեռքերս հոգացին ։ Ամէն բան
ձեզի ցուցուցի, է Թէ ասանկ պէտք
է աշխատիլ, ու տկարներուն օգ-
նուԹիւն ընել, և միտք բերել Տէր

Ցամր Տեառն
60

ճ Հմր 3 ։
մ Հմր 27 ։
յ Գլ. ժբ. 5 ։
ն Մար. ա. 15 ։ Ղուկ. իդ. 47 ։ Գլ. բ. 38 ։
շ Գլ. ժԹ. 21 ։
ո Գլ. իա. 4, 11 ։ ա Թես. գ. 3 ։
չ Գլ. իա. 13 ։ Հռով. ը. 35 ։ բ Կոր. դ. 16 ։
պ բ Տիմ. դ. 7 ։
ջ Գլ. ա. 17 ։ բ Կոր. դ. 1 ։
ռ Գաղ. ա. 1 ։ Տիտ. ա. 3 ։
ս Հմր 38 ։ Հռով. ժե. 23 ։
վ Գլ. ժբ. 6 ։ բ Կոր. է. 2 ։
տ Հմր 20 ։
ր Ղուկ. է. 30 ։ Յովհ. ժե. 15 ։ Եփե. ա. 11 ։
ց ա Տիմ. դ. 16 ։ ա Պետ. ե. 2 ։
ւ ա Կոր. ժբ. 28 ։
† Ոմանք՝ Տէրոջը
‡ Տես Եբր. Թ. 14 ։
+ Եփե. ա. 7, 14 ։ Կող. ա. 14 ։ Եբր. Թ. 12 ։ ա Պետ. ա. 19 ։ Յայտ. ե. 9 ։
° Մատ. է. 15 ։ բ Պետ. բ. 1 ։
‡ Կամ՝ փտասակար
§ ա Տիմ. ա. 20 ։ ա Յովհ. բ. 19 ։
ա Գլ. ժԹ. 10 ։
բ Եբր. ժգ. 9 ։
գ Գլ. Թ. 31 ։
դ Գլ. իզ. 18 ։ Եփե. ա. 18 ։ Կող. ա. 12 ։ գ. 24 ։ Եբր. Թ. 15 ։ ա Պետ. ա. 4 ։
ե ա Թագ. ժբ. 3 ։ ա Կոր. Թ. 12 ։ բ Կոր. է. 2 ։ ժա. 9 ։ ժբ. 17 ։
զ Գլ. ժբ. 3 ։ ա Կոր. դ. 12 ։ ա Թես. բ. 9 ։ բ Թես. գ. 8 ։
է Հռով. ժե. 1 ։ ա Կոր. Թ. 12 ։ բ Կոր. ժա. 9, 12 ։ ժբ. 13 ։ Եփե. դ. 28 ։ ա Թես. դ. 11 ։ ե. 14 ։ բ Թես. գ. 8 ։

Ցոյց Տեղեաց
60

Ցիսուսին խօսքը, որ ինքը ըսաւ.
Աւելի երանելի է տալը՝ քան թէ
36 առնելը։ Եւ աս որ ըսաւ, անոնց
ամենուն հետ [ը]ծնկան վրայ գալով՝
37 աղօթք ըրաւ։ Ամէնքն ալ սաստիկ կու լային, ու Պօղոսին [թ]պա-
րանոցին վրայ իյնալով՝ զանիկայ
38 կը համբուրէին։ Սիրտերնին աւելի
կը ցաւէր ան խօսքին համար, [ժ]որ
կ'ըսէր՝ թէ ալ պիտի չտեսնեն իր
երեսը. և զանիկայ ճամբայ դրին
մինչև նաւը երթալով։

ը Գլ. է. 59; իա. 5։
թ Ծն. խե. 14; խզ. 29։
ժ Հմր. 25։

## ԳԼ. ԻԱ

1 Պօղոս բնաւ չհամոզուիր Երուսաղէմ երթալէն ետ կենալու։ 9 Փիլիպպոսին մարգարէ աղջիկները։ 17 Պօղոս Երուսաղէմ կ'երթայ, 27 ուր տեղ կը բռնուի, ու մեծ վտանգի մէջ կ'իյնայ. 31 բայց հազարապետը ազատելով զանիկայ, հրաման կու տայ որ ժողովուրդին խօսի։

1 Եւ երբոր ելանք ու անոնցմէ զա-
տուեցանք՝ շիտակ նաւելով՝ Կով
եկանք, և միւս օրը Հռոդոն, ու
2 անկէ Պատարա։ Եւ նաւ մը
գտանք որ Փիւնիկէ կ'երթար, ու
անոր մէջը մտնելով՝ ճամբայ ե-
3 լանք։ Եւ Կիպրոս որ երևցաւ,
զանիկայ ձախ կողմերնիս թող
տալով՝ դէպ 'ի Սիւրիա նաւեցինք,
և Տիւրոս ելանք. ինչու որ նաւը
4 հոն պիտի թափէր իր բեռը։ Եւ
աշակերտները գտնելով՝ եօթը օր
հոն կեցանք, որոնք [ա]Սուրբ Հո-
գիով կ'ըսէին Պօղոսին որ Երու-
5 սաղէմ չելլէ։ Ու երբոր ան օրերը
անցուցինք, ելանք ու կ'երթա-
յինք. ամէնն ալ կնիկներով ու
տղաքներով մինչև քաղաքէն դուրս
մեզ ճամբայ դրին. [բ]և ծովուն
եզերքը ծնկան վրայ գալով՝ աղօթք
6 ըրինք։ Ու իրարու հրաժարական
ողջոյն տալով՝ մենք նաւը ելանք.
7 անոնք ալ տեղերնին դարձան։ Իսկ
մենք Տիւրոսէն նաւելով և
ծովու ճամբորդութիւնը լմնցընե-
լով՝ Պտողեմայիս հասանք, ու
եղբայրները բարևելով՝ օր մը քո-
8 վերնին կեցանք։ Եւ հետևեալ օրը
անկէ ելանք ու Կեսարիա եկանք. և
Փիլիպպոս [գ]աւետարանչին տունը
մտնելով, [դ]որ ինքը եօթնէն մէկն
9 էր, անոր քովը կեցանք։ Անիկայ
չորս հատ կոյս աղջիկ ունէր, [ե]որ
10 մարգարէութիւն կ'ընէին։ Եւ հոն
շատ օրեր որ կեցանք, Հրէաս-
տանէն մարգարէ մը իջաւ [զ]Ագաբոս
11 անունով. Ու երբոր մեզի եկաւ,
Պօղոսին գօտին առնելով իր ձեռ-
քերը ու ոտքերը կապեց, և ը-
սաւ. Ասանկ կ'ըսէ Հոգին Սուրբ.
Ան մարդը՝ որունն է աս գօտին,
[է]ասանկ պիտի կապեն Հրէաները
Երուսաղէմի մէջ ու հեթանոս-

ա Հմր. 12; Գլ. ի. 23։
բ Գլ. ի. 36։
գ Եփե. դ. 11; բ Տիմ. դ. 5։
դ Գլ. զ. 5; ը. 26. 40։
ե Յովել. բ. 28; Գլ. բ. 17։
զ Գլ. ժա. 28։
է Հմր. 33; Գլ. ի. 28։

12 ներուն ձեռքը պիտի մատնեն։ Ու
երբոր աս լսեցինք, աղաչեցինք մենք
ալ և տեղացիք ալ որ Երուսա-
13 ղէմ չելլէ։ Իսկ Պօղոս պատաս-
խան տուաւ. [ը]Ի՞նչ կ'ընէք, ին-
չո՞ւ կու լաք ու իմ սիրտս կը
ճմլէք. քանզի ես չէ թէ միայն
Երուսաղէմի մէջ կապուելու, հա-
պա նաև մեռնելու ալ պատրաստ
եմ Տէր Յիսուսի անուանը համար։
14 Եւ ինքը որ միտք չըրաւ, լուռ
կեցանք, ու ըսինք՝ [թ]Տէրոջը կամքը
թող ըլլայ։
15 Եւ ան օրերէն ետև պատրաս-
16 տուելով՝ Երուսաղէմ ելանք։ Կե-
սարացի աշակերտներէն ալ մէկ քա-
նիները մեր հետը եկան, և մեզ
տարին առջի աշակերտի մը՝ Կիպ-
րացի Մնասոնին, որուն քովը պիտի
17 կենայինք։ [ժ]Ու երբոր Երուսաղէմ
մտանք, եղբայրները ուրախու-
18 թեամբ մեզ ընդունեցին։ Եւ
հետևեալ օրը Պօղոս մեզի հետ
[ի]Յակոբոսին քովը գնաց, ու բոլոր
19 երէցներն ալ եկան։ Եւ զանոնք
բարևելով՝ մի ըստ միոջէ [լ]կը պատ-
մէր՝ ինչ որ Աստուած հեթանոսնե-
րուն մէջը ըրաւ [խ]իր ծառայութիւ-
20 նովը։ Անոնք ալ լսելով փառք
կու տային Աստուծոյ. և ըսին իրեն.
Կը տեսնե՞ս եղբայր՝ քանի բիւրա-
ւոր հաւատացեալ Հրէաներ կան,
ու ամէնն ալ [ծ]օրէնքին նախանձա-
21 ւոր են։ Բայց քու վրայովդ իմացան
թէ դուն բոլոր հեթանոսներուն
մէջ եղած Հրէաներուն Մովսէսէն
ապստամբիլ կը սորվեցընես. ը-
սելով որ տղաքնին չթլփատեն, և
սովորութիւններուն համեմատ չը-
22 վարուին։ Արդ՝ ի՞նչ պիտի ըլլայ.
անշուշտ բազմութիւն պիտի ժող-
վուի. ինչու որ պիտի լսեն թէ ե-
23 կեր ես։ Ուստի աս բանը ըրէ որ
24 քեզի կ'ըսենք. Մեր քովը չորս
մարդ կայ, որոնք իրենց վրայ ուխտ
դրած են. անոնք առ՝ իրենց հետը
մաքրուէ, և անոնց համար ծախք
ըրէ, որ [կ]իրենց գլուխը ածիլեն.
որպէս զի ամէնն ալ գիտնան թէ
քու վրայովդ իմացած բաներնին
ոչինչ է, հապա դուն ալ մէկ հետը
կը քալես օրէնքը պահելու մէջ։
25 Բայց հաւատքի եկող հեթանոսնե-
րուն համար [հ]մենք թուղթ ղրկե-
ցինք՝ խնամք որ որոշեցինք, որ ա-
նոնք բնաւ ասանկ բաներ չպահեն.
միայն թէ զգուշանան կուռքերու
զոհուածէ, ու արիւնէ. և խեղ-
26 դուածէ. ու պոռնկութենէ։ Ան
ատենը Պօղոս ան մարդիկը առաւ,
ու հետևեալ օրը անոնց հետ մաք-
րուած [ձ]տաճարը մտաւ, [ղ]մաք-
րութեան օրերը լմննալը ցուցընե-

Ցոյց Տեղեաց
60

ը Գլ. ի. 24։
թ Մատ. զ. 10; իզ. 42; Ղու. ժա. 2; իբ. 42։
ժ Գլ. ժե. 4։
ի Գլ. ժե. 13; Գաղ. ա. 19; բ. 9։
լ Գլ. ժե. 4. 12; Հռով. ժե. 18. 19։
խ Գլ. ա. 17; ի. 24։
ծ Գլ. իբ. 3; Հռով. ժ. 2; Գաղ. ա. 14։
կ Թուոց. զ. 2. 13. 18; Գլ. ժը. 18։
հ Գլ. ժե. 20. 29։
ձ Գլ. իդ. 18։
ղ Թուոց. զ. 13։

Ցամ Տեառն 60

լու համար . մինչև որ անոնց ամէն
մէկուն համար պատարագ մատու-
ցուեցաւ ։
27 Ու երբոր եօթը օրերը լմըննալու
վրայ էին . Ասիացի Հրէաները զա-
նիկայ տաճարին մէջը տեսնելով՝
բոլոր բազմութիւնը խռովեցուցին ,
և անոր ձեռք զարկած՝ կը կան-
28 չուըռտէին . Իսրայէլացի մարդիկ՝
օգնութեան հասէք . աս ան մարդն
է՝ որ ամէն տեղ ժողովուրդին , և
օրէնքին , ու աս տեղին դէմ բան
կը սորվեցընէ ամենուն . մինչև որ
տաճարին մէջը Յոյներ ալ մտցուց ,
29 և աս սուրբ տեղը պղծեց . ( Ինչու
որ առաջուց Եփեսացի Տրոփի-
մոսը իրեն հետ քաղաքին մէջը տե-
սեր էին . և կը կարծէին թէ՝ Պօղոս
30 անիկայ տաճարը մտցուց . ) Ու
բոլոր քաղաքը շարժեցաւ , և ժո-
ղովուրդը դիզուեցաւ , ու բռնեցին
Պօղոսը տաճարէն դուրս քաշեցին .
և շուտ մը դռները գոցուեցան .
31 Ու երբոր անոնք կ'ուզէին անիկայ
սպաննել , լուր հասաւ գունդին
հազարապետին՝ թէ բոլոր Երու-
32 սաղէմը իրար անցեր է ։ Ան ալ
անմիջապէս զինուորներ , և հարիւ-
րապետներ առած՝ անոնց վրայ
վազեց . անոնք ալ հազարապետը
ու զինուորները տեսնելով՝ Պօղոսը
33 ծեծելէն դադարեցան ։ Ան ատենը
հազարապետը մօտենալով՝ բռնեց
զանիկայ , և հրաման ըրաւ որ կըր-
կին շղթայով կապեն . ու կը հար-
ցընէր՝ թէ անիկայ ո՞վ է , ու ի՞նչ
34 ըրեր է ։ Եւ բազմութեանը մէ-
ջէն մէկը մէկ կերպ՝ ու մէկալը ու-
րիշ կերպ բան կը կանչուըռտէին .
իսկ երբոր չկրցաւ ան շփոթութե-
նէն ստոյգը գիտնալ , հրաման ը-
րաւ որ զանիկայ բերդը տանին ։
35 Ու երբոր սանդուխը հասաւ , ա-
նանկ պատահեցաւ որ զինուորները
վեր վերցընեն անիկայ՝ ժողովուր-
36 դին բռնութեանը համար . Ինչու որ
ժողովուրդին բազմութիւնը ետևէն
կ'երթար , ու կ'ըսէին . Վերցո՛ւր
37 ատիկայ ։ Ու երբոր Պօղոս բերդը
մտնելու վրայ էր , հազարապետին
ըսաւ . Արդեօք կարելի՞ է որ քեզի
38 բան մը խօսիմ ։ Ան ալ ըսաւ ,
Յունարէն գիտե՞ս . Չէ՞ որ դուն
ան Եգիպտացին ես , որ աս օրերէս
առաջ չորս հազար *սրիկայ մար-
դիկ ապստամբեցուցիր , ու անա-
39 պատը հանեցիր ։ Պօղոս ալ ըսաւ .
Ես Հրէայ մարդ մըն եմ՝ Կիլիկիոյ
Տարսոնէն , չէ թէ աննշան քաղա-
քի մը քաղաքացի , ու կ'աղաչեմ
քեզի՝ ինծի հրաման տուր որ
ժողովուրդին խօսիմ ։
40 Ու երբոր անիկայ հրաման տուաւ ,

Գլ . ԻԴ . 18 ։
Գլ . ԻԶ . 21 ։
Գլ . ԻԴ . 5 . 6 ։
Գլ . Ի . 4 ։
Գլ . ԻԶ . 21 ։
Գլ . ԻԳ . 27 ։ ԻԴ . 7 ։
Հմր 11 ։ Գլ . Ի . 22 ։
Ղու . ԻԳ . 18 ։ Յով . ԺԹ . 15 ։ Գլ . ԻԲ . 22 ։
Աս Եգիպտացին ելաւ Ցա . Տ . 55
Տե՛ս Գլ . Ե . 36 ։
* Յուն . սիկարեան , ՚ի դաշնակակիր մարդասպան ։
Գլ . Թ . 11 ։ ԻԲ . 3 ։

Պօղոս սանդուխին վրայ կայնելով՝
ձեռքը շարժեց ժողովուրդին , ու
երբոր աղէկ մը լռութիւն եղաւ ,
Եբրայական լեզուով խօսեցաւ ա-
նոնց , ու ըսաւ .

## ԳԼ . ԻԲ

1 Պօղոս մի ըստ միոջէ կը պատմէ իր դարձի
գալը . 17 և իր առաքելութեան կանչուիլը .
22 բայց հեթանոսներուն խօսքը ընելուն պէս՝
ժողովուրդը բարձրաձայն կ'աղաղակեն անոր
դէմ ։ 24 Հազարապետը հրաման կ'ընէ որ
ծեծեն Պօղոսը . 25 բայց անիկայ իր Հռովմա-
յեցի ըլլալը իմացընելով՝ կ'ազատի ։

1 Մարդիկ եղբայրներ և հայրեր՝
ինծի մտիկ ըրէք որ հիմա ձեզի
2 պատասխան կու տամ . ( Երբոր
լսեցին որ Եբրայական լեզուով կը
խօսէր իրենց , ալ աւելի լռութ կե-
3 ցան . Եւ անիկայ ըսաւ . ) Ես
Հրէայ մարդ մըն եմ Կիլիկիոյ Տար-
սոնին մէջ ծնած՝ և աս քաղաքիս
մէջ Գամաղիէլին ոտքը մեծ-
ցած , Մեր հայրենի օրէնքին
ճշդութեանը պէս կրթուած , նա-
խանձաւոր էի Աստուծոյ՝ ինչպէս
4 որ այսօր դուք ամէնքդ էք ։ Որ
ես էրիկ մարդիկ ու կնիկ մարդիկ
կապելով , ու բանտերու մատնե-
լով աս ճամբան հալածեցի մինչև 'ի
5 մահ . Ինչպէս որ քահանայապետն
ալ կը վկայէ ինծի համար՝ և բոլոր
ծերակոյտը . որ իրենցմէ թուղ-
թեր ալ առնելով եղբայրներուն՝
Դամասկոս կ'երթայի , որ հոն ե-
ղածներն ալ կապուած Երուսաղէմ
6 բերեմ , որ պատժուին ։ Ու եղաւ
որ երբ կ'երթայի՝ ու Դամասկոսին
մօտեցայ , կէս օրուան դէմ յան-
կարծակի երկինքէն մեծ լոյս մը
7 փայլատակեց իմ բոլորտիքս . Եւ
գետինը ինկայ , ու ձայն մը լսեցի՝
որ ինծի կ'ըսէր . Սաւո՛ւղ՝ Սաւուղ ,
8 ինչո՞ւ զիս կը հալածես ։ Ես ալ
պատասխան տուի թէ՝ Դուն ո՞վ
ես՝ Տէր . ան ալ ինծի ըսաւ . Ես
Յիսուս Նազովրեցին եմ , որ դուն
9 կը հալածես ։ Բայց անոնք որ իմ
հետս էին՝ լոյսը տեսան , ու վախով
լեցուեցան , սակայն ինծի խօսողին
10 ձայնը չլսեցին ։ Եւ ըսի , Ի՞նչ
ընեմ՝ Տէր . և Տէրը ինծի ըսաւ .
Ելի՛ր գնա Դամասկոս , ու հոն քե-
զի պիտի զրուցուի ան ամէն բանե-
րուն համար , որ սահմանուած է
11 որ ընես ։ Ու երբոր չէի տեսներ
ան լոյսին փառքէն , հետս եղող-
ները ձեռքէս բռնած՝ Դամասկոս
12 մտայ ։ Եւ Անանիա անուն մարդ
մը՝ օրէնքին համեմատ աստուածա-
վախ , ու Դամասկոս բնակող բոլոր
13 Հրէաներէն բարի վկայուած . ին-
ծի եկաւ , ու քովս կայնելով ինծի
ըսաւ . Սաւո՛ւղ եղբայր , վեր նա-

Ցամ Տեառն 60

Գլ . ԺԲ . 17 ։
Գլ . Է . 2 ։
Գլ . ԻԱ . 39 ։ Բ Կոր . ԺԱ . 22 ։ Փիլ . Գ . 5 ։
Գլ . Ե . 34 ։
Բ Օր . ԼԳ . 3 ։ Գ Թագ . Դ . 38 ։ Ղու . Ժ . 39 ։
Գլ . ԻԶ . 5 ։
Գլ . ԻԱ . 20 ։ Գաղ . Ա . 14 ։
Հռով . Ժ . 2 ։
Գլ . Ը . 3 ։ ԻԶ . 9 . 10 . 11 ։ Փիլ . Գ . 6 ։ Ա Տիմ . Ա . 13 ։
Ղու . ԻԲ . 66 ։ Գլ . Դ . 5 ։
Գլ . Թ . 2 ։ ԻԶ . 10 . 12 ։
Գլ . Թ . 3 ։ ԻԶ . 12 . 13 ։
Գլ . Թ . 7 ։ Դան . Ժ . 7 ։
Գլ . Թ . 17 ։
Ա Տիմ . Գ . 7 ։
Գլ . Ժ . 22 ։

14 յէ ։ Եւ ալ նոյն ժամուն վեր նա-
յեցայ իրեն . և անիկայ ըսաւ .
ՀՄեր հայրերուն Աստուածը առա-
ջուց քեզ ընտրեց , որ իր կամքը
ճանչնաս՝ ու ան ԱԱրդարը տես-
նես , և անոր բերնէն ձայն լսես .
15 Քանզի բոլոր մարդոց առջևը անոր
վկայ պիտի ըլլաս ան բաներուն հա-
16 մար , որ տեսար ու լսեցիր ։ Եւ
հիմա՝ ալ ի՞նչ կ'ուշանաս , ելի՛ր
մկրտուէ՝ ու մեղքերդ լուա՛ *ա-
17 նոր անունը կանչելով ։ Եւ եղաւ
որ երբոր Երուսաղէմ դարձայ՝ ու
տաճարին մէջ աղօթք կ'ընէի ,
մտքի յափշտակութիւն մը եկաւ
18 վրաս , Եւ զինքը տեսայ , որ ինծի
կ'ըսէր . ԶԱրտորցի՛ր՝ շուտով Երու-
սաղէմէն ելի՛ր . ինչու որ քու ինծի
համար ըրած վկայութիւնդ պիտի
19 չընդունին ։ Ես ալ ըսի . Տէ՛ր՝ ի-
րենք աղէկ գիտեն թէ ես էի՝ որ
քեզի հաւատացողները բանտը կը
դնէի , և ժողովարաններուն մէջ
20 կը ծեծէի . Ու երբոր քու Ստե-
փաննոս վկայիդ արիւնը կը թա-
փուէր , ես ինքս ալ ներկայ էի ,
և կամակից էի †անոր սպաննուե-
լուն" . ու զանիկայ սպաննողնե-
րուն հանդերձները ես կը պահէի ։
21 Եւ ինծի ըսաւ . Գնա՛ , ինչու որ
ես քեզ հեռաւոր հեթանոսներուն
պիտի խրկեմ ։
22 Եւ անոնք մինչև աս խօսքս ա-
կանջ դրին իրեն . ետքը ձայներնին
վերցուցին՝ ու ըսին . Վերցո՛ւր
աշխարհէն ատանկ մարդը . քան-
23 զի չվայլեր ատոր ողջ մնալ ։ Ու
երբոր կը կանչուըռտէին , ու հան-
դերձնին կը նետէին , և փոշին դէպ
24 'ի օդը կը ցանէին , Հազարապե-
տը հրաման ըրաւ որ զանիկայ բեր-
դը մտցընեն , ու ըսաւ որ ծեծով
հարցուփորձ ընեն անոր , որ գի-
տնայ թէ ինչ յանցանքի համար ա-
նոր դէմ անանկ կը կանչուըռտէին ։
25 Ու երբոր կաշի կապերով զինքը
կապեցին , Պօղոս վերակացու հա-
րիւրապետին ըսաւ . Արժա՞ն է
ձեզի Հռովմայեցի ու չդատապար-
26 տուած մարդ մը ծեծել ։ Հարիւ-
րապետը երբոր աս լսեց , գնաց հա-
զարապետին պատմեց՝ ու ըսաւ .
‡Ի՞նչ պիտի ընես , ինչու որ աս
27 մարդը Հռովմայեցի է ։ Հազա-
րապետն ալ քովը գնաց՝ ու ըսաւ
անոր . Ըսէ՛ ինծի , դուն Հռովմա-
28 յեցի՞ ես . ան ալ ըսաւ . Այո՛ ։ Հա-
զարապետը պատասխան տուաւ .
Ես շատ ստակով ձեռք բերի աս
քաղաքացիութեան իրաւունքը . և
Պօղոս ըսաւ . Ես բուն անոր մէջը
29 ծնած եմ ։ Ու անոնք որ իրեն
հարցուփորձ պիտի ընէին , շուտ
մը ետ կեցան իրմէն . և հազարա-
պետն ալ վախցաւ , երբոր իմացաւ
թէ Հռովմայեցի է , և որովհետև
զանիկայ կապեր էր ։
30 Ու հետևեալ օրը ուզելով որ
շիտակը գիտնայ թէ ինչ է Հրեա-
ներուն ըրած ամբաստանութիւնը
անոր դէմ , արձըկեց անիկայ , և
հրաման ըրաւ որ քահանայապետ-
ները ու բոլոր ժողովքը մէկտեղ
գան . և Պօղոսը իջեցընելով՝ ա-
նոնց առջևը կայնեցուց ։

## ԳԼ . ԻԳ

1 Երբոր Պօղոս զինքը կը պաշտպանէր , 2 Անա-
նիա կը հրամայէ որ անոր բերնին զարնեն ։
7 Երկպառակութիւն կը ծագի Պօղոսի դա-
տախազներուն մէջտեղը ։ 11 Աստուած կը
քաջալերէ զանիկայ ։ 12 Հրեայք Պօղոսի
համար որոգայթ կը լարեն ։ 20 Հազարապե-
տը իմանալով աս բանը , 27 Փելիքս կուսակա-
լին կը խրկէ Պօղոսը ։

1 Եւ Պօղոս իր աչքերը ժողովքին
վրայ դարձընելով՝ ըսաւ . Մար-
դի՛կ եղբայրներ , ես բոլորովին բա-
րի խղճմտանքով կեանք վարեր եմ
Աստուծոյ առջևը՝ մինչև աս օրս ։
2 Անանիա քահանայապետն ալ հրա-
ման ըրաւ իր քովը կայնողներուն՝
3 որ անոր բերնին զարնեն ։ Ան ա-
տենը Պօղոս ըսաւ անոր . Աստուած
քեզի պիտի զարնէ՝ ծեփած պատ ,
որ դուն նստեր ես օրէնքին համե-
մատ զիս դատելու , և օրէնքէն
դուրս հրաման կ'ընես որ ինծի զար-
4 նեն ։ Եւ բոլորտիքը կայնողները
ըսին . Աստուծոյ քահանայապե՞տը
5 կը նախատես ։ Պօղոս ալ ըսաւ .
Ե՛ղբայրներ՝ չէի գիտեր որ քահա-
նայապետ է . ինչու որ գրուած է ,
Քու ժողովուրդիդ իշխանին դէմ
6 չարախօսութիւն մի՛ ըներ ։ Եւ
Պօղոս գիտնալով որ մէկ կողմը
սադուկեցիներ են , ու մէկալը փա-
րիսեցիներ , կ'աղաղակէր ժողովքին
մէջ . Մարդի՛կ եղբայրներ , Ես
փարիսեցի եմ՝ փարիսեցիի որդի .
մեռելոց յարութեանը յոյսին հա-
7 մար կը դատուիմ ։ Ու երբոր աս
ըսաւ , փարիսեցւոց և սադուկե-
ցւոց մէջը երկպառակութիւն ին-
կաւ , և բազմութիւնը բաժնուե-
8 ցաւ ։ Քանզի սադուկեցիք կ'ըսեն
թէ յարութիւն չկայ , և ո՛չ հրեշ-
տակ , ո՛չ ալ հոգի . բայց փարի-
սեցիք երկուքն ալ կը դաւանին ։
9 Եւ մեծ աղաղակ մը եղաւ . ու փա-
րիսեցւոց կողմէն եղող դպիրները
ոտքի վրայ ելլելով՝ դէմ կը կենային
ու կ'ըսէին . Մենք աս մարդուն
վրայ չարութիւն մը չենք գտներ .
Հապա թէ որ հոգի մը կամ հրեշ-
տակ մը ատոր խօսած է , ‖ի՞նչ ։
10 Ու երբոր աղմուկը շատցաւ , հա-
զարապետը վախնալով որ չըլլայ

Յամի Տեառն 60

Գլ. Գ. 13. Ե. 30.
Գլ. Թ. 15. ԻԶ. 16.
Գլ. Գ. 14. Է. 52.
Ա Կոր. Թ. 1. ԺԵ. 3.
Ա Կոր. ԺԱ. 23. Գաղ. Ա. 13.
Գլ. ԻԳ. 11.
Գլ. Դ. 20. ԻԶ. 16.
Գլ. Բ. 38. Եբր. Ժ. 22.
Գլ. Թ. 14. Հռովմ. Ժ. 13.
*Ոմանք՝ Տերոջը
Գլ. Թ. 26. Բ Կոր. ԺԲ. 2.
Հմր 14.
Մատ. Ժ. 14.
Հմր 4. Գլ. Ը. 3.
Մատ. Ժ. 17.
Գլ. Է. 57.
Ղուկ. ԺԱ. 48. Գլ. Է. 59. Հռովմ. Ա. 32.
†Ոմանք չունին.
Գլ. Թ. 15. ԺԳ. 2, 46, 47. ԺԸ. 6. ԻԶ. 17. Հռովմ. Ա. 5. ԺԱ. 13. ԺԵ. 16. Գաղ. Ա. 15, 16. Բ. 7, 8. Եփե. Գ. 7, 8. Ա Տիմ. Բ. 7. Բ Տիմ. Ա. 11.
Գլ. ԻԱ. 36.
Գլ. ԻԵ. 24.
Գլ. ԺԶ. 37.
‡Ոմանք՝ Նայէ՛ ինչ

Յամի Տեառն 60

Գլ. ԻԴ. 16. Ա Կոր. Դ. 4. Բ Կոր. Ա. 12. Դ. 2. Բ Տիմ. Ա. 3. Եբր. ԺԳ. 18.
Գ Թագ. ԻԲ. 24. Երեմ. Ի. 2. Յով. ԺԸ. 22.
Ղև. ԺԹ. 35. Բ Օր. ԻԵ. 1, 2. Յով. Է. 51.
Գլ. ԻԴ. 17.
Ել. ԻԲ. 28. Ժող. Ժ. 20. Բ Պետ. Բ. 10. Յուդ. 8.
Գլ. ԻԶ. 5. Փիլ. Գ. 5.
Գլ. ԻԴ. 15, 21. ԻԶ. 6. ԻԸ. 20.
Մատ. ԻԲ. 23. Մար. ԺԲ. 18. Ղուկ. Ի. 27.
Գլ. ԻԵ. 25. ԻԶ. 31.
Գլ. ԻԲ. 7, 17, 18.
‖Ոմանք՝ Աստուծոյ հետ չմարտնչինք ։

Յամի Տեառն 60

թէ Պօղոս անոնցմէ փառատուի ,
զինուորներուն հրաման ըրաւ որ իջ֊
նեն զանիկայ անոնց մէջէն յափշ֊
Գլ. ԺԸ. 9. ԻԷ. 23, 24. — 11 տակեն՝ ու բերդը բերեն ։ Եւ հե֊
տեւեալ գիշերը Տէրը անոր քովը
կայնեցաւ՝ ու ըսաւ . Քաջասիրտ
եղիր՝ Պօղոս . վասն զի ինչպէս որ
Երուսաղէմի մէջ ինծի համար վկա֊
յեցիր , անանկ պէտք է քեզի՝ որ
Հռովմայ մէջ ալ վկայես ։
Վեր 21, 30. Գլ. ԻԵ. 3. — 12 Ու երբոր առտու եղաւ , Հրէա֊
ներէն ոմանք միաբանեցան , ու ինք֊
զինքնին անէծքի տակ դրին , ըսե֊
լով որ չուտեն ու չխմեն՝ մինչեւ որ
13 Պօղոսը սպաննեն ։ Եւ քառսու֊
նէն աւելի էին՝ որ աս երդումը իրա֊
14 րու հետ ըրին . Որ ասոնք քահա֊
նայապետներուն և ծերերուն գացին՝
ու ըսին . Անէծքով անիծեցինք ան֊
ձերնիս՝ որ բան մը չուտենք մինչև
15 որ Պօղոսը սպաննենք ։ Ուստի
դուք ժողովքին հետ մէկտեղ հա֊
զարապետին իմացուցէք որ վաղը
անիկայ ձեզի իջեցընէ , որպէս թէ
դուք աւելի ճիշդ քննութիւն ը֊
նել կ'ուզէք անոր վրայով . և մենք
անոր մօտ գալէն առաջ պատրաստ
16 ենք զանիկայ սպաննելու ։ Եւ Պօ֊
ղոսին քրոջը որդին երբոր աս դա֊
ւաճանութիւնը լսեց , եկաւ բերդը
17 մտաւ , ու Պօղոսին պատմեց ։ Պօ֊
ղոս ալ հարիւրապետներուն մէկը
իրեն կանչելով՝ ըսաւ . Աս պատա֊
նին հազարապետին տար , ինչու որ
բան մը ունի անոր իմացընելու ։
18 Ան ալ առաւ զանիկայ և տարաւ
հազարապետին՝ ու ըսաւ . Բան֊
տարկեալ Պօղոսը զիս կանչեց , և
աղաչեց որ աս պատանին քեզի բե֊
19 րեմ , որ քեզի խօսելիք ունի ։ Եւ
հազարապետը անոր ձեռքէն բռնե֊
լով մէկդի գնաց . ու հարցուց թէ՝
Ի՞նչ բան ունիս ինծի իմացընելու ։
Վեր 12. — 20 Եւ անիկայ ըսաւ . Հրէաները
միաբանեցան քեզի աղաչելու՝ որ
վաղը Պօղոսը ատեանը իջեցընես ,
որպէս թէ կ'ուզեն աւելի ճիշդ
քննութիւն մը ընել անոր վրա֊
21 յով . Բայց դուն անոնց մտիկ չը֊
նես . ինչու որ անոնցմէ քառսու֊
նէն աւելի մարդիկ դարանամուտ
եղած են անոր համար , որոնք
ինքզինքնին անէծքի տակ դրին՝ որ
չուտեն ու չխմեն , մինչև որ անիկայ
սպաննեն . ու հիմա պատրաստ են ,
22 և քու հրամանիդ կը սպասեն ։ Ան
ատենը հազարապետը պատանին
ճամբեց , պատուիրելով թէ Մէկու
մը մի՛ ըսեր՝ որ աս բանը ինծի
իմացուցիր ։
23 Եւ հարիւրապետներէն երկուքը
կանչեց՝ ու ըսաւ . Երկու հարիւր
զինուոր պատրաստեցէք , ու եօ֊
թանասուն ձիաւոր , և երկու հա֊
րիւր գեղարդաւոր , որ մինչև Կե֊
սարիա երթան գիշերուան ժամը
24 իրեքին . Եւ գրաստնե՛ր պատրաս֊
տեցէք , որ Պօղոսը հեծցընեն ու
ապահովութեամբ Փելիքս կուսա֊
25 կալին տանին ։ Եւ թուղթ մը
26 գրեց աս օրինակին պէս ։ Կղօդիոս
Լիւսիաս՝ պատուական Փելիքս կու֊
27 սակալիդ ողջոյն ։ Աս մարդը — Գլ. ԻԱ. 33. ԻԴ. 7.
Հրէաներէն բռնուեր էր , և ա֊
նոնցմէ պիտի սպաննուէր . իսկ ես
զինուորներով վրայ հասած՝ ազա֊
տեցի զանիկայ , իմանալով որ
28 Հռովմայեցի է ։ Եւ կուզելով — Գլ. ԻԲ. 30.
պատճառը գիտնալ՝ որուն համար
ատոր վրայ ամբաստանութիւն կ'ը֊
նէին , իջեցուցի ատիկայ անոնց ա֊
29 տեանը . Որ գտայ ամբաստանուած
իրենց օրէնքին վերաբերեալ խնդիր֊ — Գլ. ԺԸ. 15. ԻԵ. 19.
ներու համար . և մեռնելու կամ — Գլ. ԻԶ. 31.
կապուելու արժանի յանցանք մը
30 չունէր ։ Ու երբոր լուր առի որ — Վեր 20.
Հրէայք ատ մարդուն համար որո֊
գայթ պիտի լարեն , իսկոյն քեզի
ղրկեցի , հրաման ընելով ամբաս֊ — Գլ. ԻԴ. 8. ԻԵ. 6.
տանողներուն ալ՝ որ քու առջեւդ
խօսին ատոր վրայով . Ողջ եղիր ։
31 Զինուորներն ալ իրենց հրա֊
մայուածին համեմատ առին Պօ֊
ղոսը՝ ու գիշերով Անտիպատրոս
32 տարին ։ Եւ հետեւեալ օրը թո֊
ղուցին ձիաւորները անոր հետը եր֊
թալու , ու իրենք բերդը դարձան ։
33 Անոնք ալ Կեսարիա մտան , ու
թուղթը կուսակալին տուին . և
Պօղոսը անոր առջեւը կայնեցու֊
34 ցին ։ Երբոր կարդաց , հարցուց
թէ ո՛ր գաւառէն է . և իմանալով
35 որ Կիլիկիայէն է , ըսաւ . Պիտի — Գլ. ԻԱ. 39.
լսեմ քեզի՝ երբոր քու ամբաստա֊ — Գլ. ԻԴ. 1, 10. ԻԵ. 16.
նողներդ ալ գան . և հրաման ըրաւ՝
որ զանիկայ Հերովդէսին պալատը — Մատ. ԻԷ. 27.
պահեն ։

## ԳԼ. ԻԴ

1 Պօղոս՝ Տերտիւղոսէն ամբաստանուած՝ 10 պատասխան կուտայ իր վարքին և վարդապետութեանը համար . 24 Կը քարոզէ զՔրիստոս՝ կուսակալին ու անոր տիկնոջը ։ 26 Կուսակալը կը յուսայ կաշառք առնել Պօղոսէն . 27 վերջապէս իր պաշտօնէն ելլելով՝ Պօղոսը կապուած կը թողու ։

1 Եւ հինգ օրէն ետքը Անանիա — Գլ. ԻԱ. 27. Գլ. ԻԳ. 2. 30, 35. ԻԵ. 2.
քահանայապետը ծերերուն հետ
ու Տերտիւղոս անուն ճարտասանի
մը հետ իջաւ . և ասոնք կուսակա֊
լին իմացուցին իրենց ամբաստանու֊
2 թիւնը Պօղոսին դէմ ։ Ու երբոր
կանչեցին անիկայ , Տերտիւղոս ըս֊
կսաւ ամբաստանել՝ ու ըսել . Ո֊
րովհետեւ քու ձեռքովդ շատ խա֊
ղաղութիւն , ու քու խնամքովդ աս
ազգին բաներուն աղէկ կարգադրու֊
3 թիւնը կը վայելենք , Ամէն կեր֊

Յամ Տեառն
60

պով ու ամէն տեղ բոլորովին կոտ
ըլլալով՝ շնորհակալ ենք՝ ով պա-
4 տուական Փելիքս ։ Բայց չըլ-
լայ որ ալ աւելի ձանձրութիւն
տամ քեզի , կ'աղաչեմ որ քու
քաղցրութեամբդ մեզի ականջ դը-
նես , որ համառօտաբար պիտի խօ-
5 սինք ։ Վ Ինչու որ մենք աս մարդը
գտանք ապականիչ և խռովարար
բոլոր Հրէաներուն՝ որ աշխարհիս
մէջ են , և Նազովրեցւոց աղանդին
6 առաջնորդ ։ Ր Որ տաճարն ալ ու-
զեց պղծել ։ որն որ բռնեցինք , Ի ու
մեր օրէնքին համեմատ ուզեցինք
7 դատաստանը ընել ։ Բայց Լիւ-
սիաս հազարապետը եկաւ մեծ
բռնութեամբ մեր ձեռքէն առաւ ,
8 Եւ Ի հրաման ըրաւ՝ որ անոր դատա-
խազները քեզի գան , որն որ դուն
քննելով՝ կարող պիտի ըլլաս տե-
ղեկանալ ան ամէն բաներուն , ո-
րոնց համար մենք ամբաստանու-
9 թիւն կ'ընենք անոր վրայ ։ Հը-
րէաներն ալ ամէնը մէկ եղած՝ ը-
սին թէ Այդպէս է ։
10 Պատասխան տուաւ Պօղոս՝
(երբոր կուսակալը անոր աչք ըրաւ
որ խօսի ։) Գիտնալով որ շատ
տարիներէ հետէ դուն աս ազգին
դատաւորն ես , աւելի յօժարու-
թեամբ ինծի վերաբերեալ բանե-
րուն համար պատասխան կու տամ ։
11 Որովհետև կրնաս գիտնալ որ ես
տասուերկու օրէն աւելի չէ՝ քանի
որ Երուսաղէմ ելայ երկրպագու-
12 թիւն ընելու ։ Ը Եւ զիս տաճարին
մէջ մէկու մը հետ վիճաբանութիւն
ընելու վրայ՝ կամ բազմութիւնը
մէկտեղ ժողված չգտան , ոչ ալ
13 ժողովարաններուն մէջ , Եւ ոչ
քաղաքին մէջ ։ ոչ ալ կրնան ա-
պացուցանել ան բաները , որոնց
համար հիմա ամբաստանութիւն
14 կ'ընեն ինծի դէմ ։ Բայց աս կը
խոստովանիմ քեզի՝ թէ Ծ ան ճամ-
բուն համեմատ՝ որ ասոնք հեր-
ձուած կ'ըսեն , ես անանկ կը պաշ-
տեմ իմ Ի հայրենի Աստուածս ,
հաւատալով ան ամէն բաներուն՝
որ Լ օրինաց և մարգարէից մէջ
15 գրուած են ։ Ի Եւ յոյս ունիմ առ
Աստուած՝ ինտոր որ ասոնք ալ
ակնկալութիւն ունին , որ մեռելոց
յարութիւն պիտի ըլլայ , Ծ թէ
արդարներուն և թէ մեղաւորնե-
16 րուն ։ Կ Եւ ես աս բանիս համար
կը ջանամ , որ ամէն ատեն մաքուր
խղճմտանք ունենամ Աստուծոյ
17 առջևը՝ ու մարդոց առջևը ։ Արդ՝
ես շատ տարիներէ ետև Հ եկայ իմ
ազգիս ողորմութիւններ բերելու ,
18 ու ընծաներ տալու ։ Ձ Ասանկով
քանի մը Ասիացի Հրէաներ զիս
տաճարին մէջը մաքրուած գտան՝
ոչ բազմութիւնով և ոչ ամբո-
19 խով , Ղ Որ անոնց պէտք էր առջևդ
գալ՝ ու ամբաստանութիւն ընել ,
թէ որ իմ վրայովս ըսելու բան մը
20 ունէին ։ Կամ թէ ասոնք իրենք
թող ըսեն՝ ինչ անիրաւութիւն
գտան իմ վրաս , երբոր ատեանը
21 կայներ էի ։ Միայն թէ աս մէկ
խօսքիս համար՝ որ երբ մէջերնին
կայներ էի , կանչեցի թէ , Ճ Մեռե-
լոց յարութեանը համար ես այսօր
22 ձեզմէ կը դատուիմ ։ Եւ Փելիքս
ուրիշ անգամի թողուց անոնք ։
ինչու որ աղէկ տեղեկութիւն ու-
նէր ան ճամբուն վրայով ։ ու ը-
սաւ ։ Երբոր Մ Լիւսիաս հազարա-
պետը հոս իջնէ , պիտի քննեմ ձեր
23 գործը ։ Եւ հարիւրապետին հրա-
ման ըրաւ որ զանիկայ պահէ , և
ընդարձակութիւն տայ , Յ ու իրեն-
ներէն մէկը չարգիլէ անոր սպասա-
ւորութիւն ընելէն կամ անոր քո-
վը երթալէն ։
24 Եւ քանի մը օրէն ետև Փելիքս
եկաւ իր Դրուսիղա կնկանը հետ՝
որ Հրէայ էր , ու Պօղոսը կանչել
տուաւ , և լսեց անկէ ան հաւատ-
քին համար՝ որ Քրիստոս Յիսուսի
25 վրայ է ։ Ու երբոր անիկայ ար-
դարութեան՝ ու ժուժկալութեան՝
և գալու դատաստանին վրայով կը
խօսէր , Փելիքս զարհուրելով պա-
տասխան տուաւ ։ Դուն հիմա գը-
նա , ու երբոր ժամանակ ունե-
նամ՝ ես քեզ նորէն կը կանչեմ ,
26 Նաև յոյս ունէր՝ որ Ն Պօղոսին
կողմէն իրեն ստակ * տրուի , անոր
համար շատ անգամ կանչել կու
տար զանիկայ՝ ու հետը կը խօսակ-
27 ցէր ։ Բայց երկու տարի որ եղաւ ,
Փելիքսին տեղը Պորկիոս Փեստոսը
եկաւ ։ Փելիքս ալ Շ Հրէաներուն
շնորհք ընել ուզելով ՝ Պօղոսը
կապուած թողուց ։

## ԳԼ ․ ԻԵ

2 Հրէայք Պօղոսին դէմ ամբաստանութիւն կ'ընեն Փեստոսին առջևը ։ 8 Պօղոս պատասխան կու տայ ։ 11 և կայսրին կը բողոքէ ։ 14 Ետքը Փեստոս անոր գործը կը պատմէ Ագրիպպաս թագաւորին , 23 և Պօղոսը նոր առջևը բերել տալով , 25 կը ծանուցանէ թէ անիկայ մահուան արժանի բան մը ըրած չէ ։

1 Արդ՝ Ք երբոր Փեստոս իր իշխանու-
թեանը գաւառը հասաւ , իրեք
օրէն ետև Կեսարիայէն Երուսա-
2 ղէմ ելաւ ։ Ա Եւ քահանայապե-
տը ու Հրէից գլխաւորները անոր ի-
մացուցին իրենց ամբաստանութիւնը
3 Պօղոսին դէմ , Եւ կ'աղաչէին ի-
րեն՝ ու շնորհք կը խնդրէին անոր
դէմ , որ զանիկայ Երուսաղէմ բե-
րել տայ ։ Բ ու իրենք դարան կը

Ը Գործ. իէ. 2 ։ Գործ. ժգ. 13 ։ ժզ. 20 ։ ժէ. 6 ։ իա. 28 ։ Ա Պետ. բ. 12 ։ 15 ։
Ր Գործ. իա. 28 ։
Ի Յովհ. ժը. 31 ։
Շ Գործ. իա. 33 ։
Ի Գործ. իգ. 30 ։

Փելիքս կուսակալ եղաւ Հրէաստանի վրայ
յա. Տ. 53

Ը Հմր 17 ։ Գործ. իա. 26 ։
Ը Գործ. իե. 8 ։ իը. 17 ։

Ծ Տիմ Ամով. ը. 14 ։ Գործ. թ. 2 ։
Ի Բ Տիմ. ա. 3 ։
Լ Գործ. իզ. 22 ։ իը. 23 ։
Ի Գործ. իգ. 6 ։ իդ. 6 ։ 7 ։ իը. 20 ։
Ծ Դան. ժբ. 2 ։ Յովհ. ե. 28. 29 ։
Կ Գործ. իգ. 1 ։
Հ Գործ. ժա. 29. 30 ։ ի. 16 ։ Հռով. ժե. 25 ։ Բ Կոր. ը. 4 ։ Գաղ. բ. 10 ։
Ձ Գործ. իա. 26. 27 ։ իդ. 21 ։

Յամ Տեառն
60

Ղ Գործ. իգ. 30 ։ իե. 16 ։
Ճ Գործ. իգ. 6 ։ իը. 20 ։
Մ Հմր 7 ։
Յ Գործ. իէ. 3 ։ իը. 16 ։
Ն Ել. իգ. 8 ։
* Ոմանք՝ որ- պէսզի զա- նիկայ ար- ձակէ ։
Յա. Տ. 62
Շ Ել. իդ. 2 ։ Գործ. ժբ. 3 ։ իե. 9 ։ 14 ։

Ա Գործ. իդ. 1 ։ Հմր 15 ։
Բ Գործ. իգ. 12 ։ 13 ։

Յամի Տեառն 62

պատրաստէին ճամբուն մէջ զանի-
4 կայ սպաննելու ։ Բայց Փեստոս
պատասխան տուաւ, որ Պօղոսը
Կեսարիայի մէջ պահուի, և որ
ինքը շատ չանցած հոն պիտի եր-
5 թար ։ Ուստի ձեզմէ որոնք որ
կարող են՝ ըսաւ, ինծի հետ թող
իջնեն, եւ թէ որ ան մարդուն վը-
րայ յանցանք մը կայ, թող անոր
6 դէմ ամբաստանութիւն ընեն ։ Եւ
հոն ութը կամ տասը օրէն աւելի
չկենալով, Կեսարիա իջաւ. ու
հետեւեալ օրը ատեանը նստելով՝
հրաման ըրաւ որ Պօղոսը բերեն ։
7 Ու երբոր անիկայ եկաւ, Երուսա-
ղեմէն իջնող Հրեաները անոր բո-
լորտիքը կայնելով, շատ ու ծանր
ամբաստանութիւններ կը բերէին
Պօղոսին դէմ, որոնք չէին կրնար
8 ապացուցանել. Ինչու որ Պօղոս
պատասխան կու տար թէ, Ես ո՛չ
Հրեաներուն օրէնքին՝ և ո՛չ տա-
ճարին՝ ո՛չ ալ կայսրին դէմ յան-
9 ցանք մը ըրած եմ ։ Բայց Փես-
տոս ուզելով որ Հրեաներուն շը-
նորհք ընէ, պատասխան տուաւ
Պօղոսին ու ըսաւ. Կ'ուզե՞ս Ե-
րուսաղէմ ելլել, և հոն աս բա-
ներուն վրայով իմ առջևս դա-
10 տուիլ ։ Պօղոս ալ ըսաւ. Կայս-
րին ատեանը կայներ եմ, ուր որ
պէտք է ինծի դատուիլ. ես Հրէ-
աներուն անիրաւութիւն մը ըրած
չեմ, ինչպէս որ դուն ալ աղէկ
11 գիտես ։ Քանզի թէ որ անիրա-
ւութիւն մը և մահուան արժանի
բան մը ըրած եմ, ես մեռնելէն
չեմ քաշուիր. բայց թէ որ չկայ
ինծի վրայ ան բաներէն մէկն ալ՝ ո-
րոնց համար ասոնք ինծի դէմ ամ-
բաստանութիւն կ'ընեն, մէկը չը-
կրնար զիս ատոնց շնորհել. Կայս-
12 րին կը բողոքեմ ։ Ան ատենը Փես-
տոս խորհրդականաց հետը խօսելով՝
պատասխան տուաւ թէ, Կայսրին
բողոքեցիր. կայսրին պիտի երթաս ։
13 Եւ քանի մը օր անցնելէն ետև՝
Ագրիպպաս թագաւորը և Բերի-
նիկէն Կեսարիա եկան՝ Փեստոսը
14 ողջունելու ։ Եւ շատ օրեր որ հոն
անցուցին, Փեստոս՝ Պօղոսին հա-
մար թագաւորին իմացուց՝ ու ը-
սաւ. Հոս մարդ մը կայ՝ որն որ
Փելիքս բանտարկուած թողուցեր
15 է. Որուն վրայով՝ երբոր Երուսա-
ղէմ գացի, քահանայապետները ու
Հրէից ծերերը իմացուցին ինծի.
և կը խնդրէին որ անոր դէմ դա-
տապարտութեան վճիռ տրուի.
16 Որոնց պատասխան տուի՝ թէ
Հռովմայեցւոց սովորութիւնը չէ՝
մարդ մը կորստեան շնորհել, մինչև
որ ամբաստանուածը ամբաստա-
նողները դիմացը չունենայ, ու ան
ամբաստանութեանը պատասխան
տալու պատեհութիւն չառնու ի-
17 րեն ։ Ուստի երբոր անոնք ինծի
հետս հոս եկան, ամենևին չուշա-
ցուցի, հապա հետեւեալ օրը ա-
տեանը նստելով՝ հրաման ըրի որ
18 մարդը բերեն. Անոր դատախազ-
ներն ալ ներկայանալով, իմ կաս-
կած ըրած յանցանքներէս մէկն ալ
19 յառաջ չէին բերեր. Հապա մէկ
քանի խնդիրներ ունէին անոր հետ
իրենց կրօնքին վրայ, և Յիսուս
անունով մեռածի մը վրայ, որուն
համար Պօղոս կ'ըսէր թէ կենդանի
20 է ։ Ու երբոր տարակուսանքի մէջ
էի աս բանիս քննութեանը վրայով,
ըսի թէ՝ Կ'ուզե՞ս Երուսաղէմ եր-
թալ, և հոն աս բաներուն համար
21 դատուիլ ։ Բայց Պօղոս երբոր
բողոքեց՝ որ պահուի Աւգոստոս
կայսրին դիմացը ելլելու, հրաման
ըրի որ զինքը պահեն՝ մինչև որ
22 կայսրին խրկեմ ։ Եւ Ագրիպպաս
ըսաւ Փեստոսին. Ես ալ կ'ուզէի
աս մարդը մտիկ ընել. ան ալ ը-
սաւ. Վաղը մտիկ կ'ընես ։
23 Ու հետեւեալ օրը երբոր Ագրիպ-
պաս ու Բերինիկէ մեծ հանդէսով
եկան՝ ու ատեանը մտան հազարա-
պետներով՝ և քաղաքին պատուա-
ւոր մարդիկներովը մէկտեղ, Փես-
տոս ալ հրաման ընելով՝ բերին
24 Պօղոսը ։ Եւ ըսաւ Փեստոս. Ագ-
րիպպա՛ս արքայ՝ և դուք ալ բոլոր
մարդիկ որ մեր հետն էք, ասիկայ
կը տեսնէք. ասոր վրայով Հրէից
բոլոր բազմութիւնը ինծի ներկա-
յացան Երուսաղէմի մէջ և հոս
ալ, ու կ'աղաղակէին թէ՝ Պէտք
25 չէ որ ալ ասիկայ ողջ մնայ ։ Բայց
ես որ հասկըցայ թէ անիկայ մեռ-
նելու արժանի բան մը ըրած չէ, և
ինքը որ Աւգոստոս կայսրին բողո-
քեց, որոշեցի որ խրկեմ զանիկայ.
26 Որուն համար մէկ հաստատ բան մը
չունիմ գրելու իմ տիրոջս. ուստի
ասիկայ ձեր առջևը բերի, և մա-
նաւանդ քու առջևդ՝ ո՛վ Ագրիպ-
պաս արքայ, որպէս զի քննութիւն
ըլլալէն ետև՝ գրելու բան մը ունե-
27 նամ ։ Ինչու որ ինծի անվայել
կ'երևնայ՝ որ մէկ բանտարկեալ մը
խրկեմ, և անոր վրայ տրուած
յանցանքները չիմացընեմ ։

Margin references: Գղ. ժը. 14 ; Հմր 18 ; Մար. ժե. 3 ; Ղուկ. իգ. 2. 10 ; Գլ. իդ. 5. 13 ; Գլ. զ. 13 ; իդ. 12 ; իը. 17 ; Գլ. իդ. 27 ; Հմր 20 ; Հմր 25 ; Գլ. ժը. 14 ; իգ. 29 ; իզ. 31 ; Գլ. իզ. 32 ; իը. 19 ; Գլ. իդ. 27 ; Հմր 2. 3 ; Հմր 4. 5 ; Հմր 6 ; Գլ. ժը. 15 ; իգ. 29 ; Գլ. թ. 15 ; Հմր 2. 3. 7 ; Գլ. իբ. 22 ; Գլ. իգ. 9. 29 ; իզ. 31 ; Հմր 11. 12

ԳԼ. ԻԶ

2 Պօղոս՝ Ագրիպպասին առջևը կը պատմէ իր վարքը իր տղայութենէն 'ի վեր ։ 12 և հրաշքով իր դարձի գալը ու առաքելական պաշտօնին կանչուիլը ։ 24 Փեստոս յիմար կը կոչէ զՊօղոս, բայց անիկայ պարկեշտութեամբ կը պատասխանէ ։ 28 Ագրիպպաս գրեթէ կը համոզուի քրիստոնեայ ըլլալու ։ 31 Բոլոր

Յամի Տեառն 62

ժողովականները կը խոստովանին անոր անմեղ ըլլալը ։

1 Եւ Ագրիպպաս ըսաւ Պօղոսին .
Հրաման է քեզի՝ որ դուն քեզի
համար խօսիս . ան ատենը Պօղոս
ձեռքը երկընցընելով՝ իրեն համար
2 պատասխան տուաւ ։ Հրէանե-
րուն իմ վրաս ըրած բոլոր ամբաս-
տանութիւններուն համար ով Ագ-
րիպպաս արքայ՝ ես զիս երանելի
կը սեպեմ , որ այսօր քու առջևդ
3 պատասխան պիտի տամ ։ Մա-
նաւանդ որ դուն Հրէաներուն բո-
լոր սովորութիւնները և խնդիր-
ները աղէկ գիտես . անոր համար
կ'աղաչեմ որ երկայնմտութեամբ
4 ինծի մտիկ ընես ։ Արդ՝ իմ ման-
կութենէս 'ի վեր իմ ինչպէս ապ-
րելուս՝ սկիզբէն Երուսաղէմ իմ
ազգիս մէջը ըլլալովս , բոլոր Հը-
5 րէաները տեղեակ են ։ Քանզի
առաջուց 'ի վեր զիս գիտեն , ( թէ
որ ուզեն վկայել , ) որ մեր կրօնքին
պինտ զգուշաւոր ճամբուն պէս
6 փարիսեցի ապրեր եմ ։ Եւ հիմա
Աստուծմէ մեր հայրերուն եղած
7 խոստմունքին յոյսին համար . Որ
մեր տասներկու ցեղը անդադար
գիշեր ու ցորեկ պաշտելով՝ կը
յուսան անոր հասնելու . ես աս
յոյսին համար Հրէաներէն կ'ամ-
բաստանուիմ՝ ով Ագրիպպաս ար-
8 քայ ։ Ի՞նչ . չհաւատալի՞ բան
կ'երեւնայ ձեզի՝ թէ Աստուած մե-
9 ռելները կը յարուցանէ ։ Ես
ինքնս ալ ինծի պարտք կը սեպէի
Յիսուս Նազովրեցիին անուանը
10 դէմ շատ բաներ ընել . Որ ըրի
ալ Երուսաղէմի մէջ . և քահա-
նայապետներէն իշխանութիւն ա-
ռած՝ սուրբերէն շատերը բանտար-
կեցի , ու անոնց սպաննուած ատենը
11 հաւանութիւն տուի ։ Եւ բոլոր
ժողովարաններուն մէջը շատ ան-
գամ զանոնք պատժելով՝ կը բռնա-
դատէի որ հայհոյեն , և անոնց դէմ
սաստիկ կատղած՝ մինչև օտար քա-
12 ղաքները կը հալածէի ։ Ասանկով
երբոր Դամասկոս ալ կ'երթայի՝
քահանայապետներէն իշխանու-
13 թիւն ու հրաման առած , Կէս
օրուան ատենը ճամբուն վրայ՝ ով
արքայ , երկինքէն լոյս մը տեսայ
արեւին լուսաւորութենէն աւելի՝
բոլորտիքս ծագած , նաև անոնց
բոլորտիքը՝ որ իմ հետս կ'երթային ։
14 Ու երբոր մենք ամէնքս գետինը ին-
կանք , ձայն մը լսեցի որ Եբրայա-
կան լեզուով ինծի կ'ըսէր . Սա-
ւո՛ւղ՝ Սաւուղ , ինչո՞ւ զիս կը
հալածես . դժուար բան է քեզի
15 խթանի դէմ կից զարնել ։ Ես
ալ ըսի . Դուն ո՞վ ես՝ Տէր . և
անիկայ ըսաւ . Ես եմ Յիսուսը՝
16 որ դուն կը հալածես . Բայց ելի՛ր՝
ու ոտքիդ վրայ կայնէ . ինչու որ
ասոր համար քեզի երեւցայ , որ
քեզ՝ ձեռք առնեմ պաշտօնեայ և
վկայ ըլլալու ան բաներուն՝ որ տե-
սար , ու ան բաներուն՝ որոնցմով
17 պիտի երեւնամ քեզի , Քեզ ա-
զատելով աս ժողովուրդէն ու հե-
թանոսներէն , որոնց հիմա քեզ
18 կը խրկեմ , Անոնց աչքերը բա-
նալու , խաւարէն՝ լոյսի , ու Սա-
տանայի իշխանութենէն Աստուծոյ
դարձընելու , որ անոնք մեղաց թո-
ղութիւն առնեն , և սուրբերուն
հետ ժառանգակից ըլլան՝ ինծի հաւա-
19 տալով ։ Ուստի Ագրիպպա՛ս արքայ՝
ան երկնային տեսիլքին անհնազանդ
20 չեղայ ես . Հապա առաջ Դա-
մասկոս ու Երուսաղէմ եղողներուն ,
և բոլոր Հրէաստանի երկիրը ու
հեթանոսներուն քարոզեցի որ ա-
պաշխարեն , ու Աստուծոյ դառ-
նան , և ապաշխարութեան արժա-
21 նաւոր գործքեր գործեն ։ Աս պատ-
ճառով Հրէաները զիս տաճարին
մէջը բռնեցին , և կը ջանային որ
22 սպաննեն ։ Սակայն Աստուծմէ
օգնութիւն հասնելով՝ մինչև աս
օրս ողջ մնացի , պզտիկին ու մեծին
վկայութիւն տալով , բան մը չը-
ըրուցելով ան բաներէն դուրս՝ որ
մարգարէները և Մովսէս խօսե-
23 ցան թէ պիտի ըլլային . Թէ
Քրիստոս պիտի չարչարուէր , և
թէ անիկայ պինտ առաջ մեռելնե-
րէն յարութիւն առած՝ լոյս պի-
տի քարոզէր ժողովուրդին ու հե-
թանոսներուն ։
24 Եւ .քանի որ անիկայ ասանկ պա-
տասխան կու տար իրեն համար ,
Փեստոս բարձր ձայնով մը ըսաւ .
Կը խելագարիս Պօղոս . շատ կար-
դացողութիւնդ քեզ կը յիմարե-
25 ցընէ ։ Պօղոս ալ ըսաւ . Ես չեմ
խելագարիր՝ ով պատուական Փես-
տոս , հապա ճշմարտութեան և ըղ-
ջախոհութեան խօսքեր կը կրուցեմ ։
26 Քանզի աս բաները թագաւորը գի-
տէ , որուն առջևը ես ալ համար-
ձակ կը խօսիմ . ինչու որ չեմ կար-
ծեր թէ ասոնցմէ մէկ բան մը անկէ
ծածկուած ըլլայ . վասն զի աս բա-
նը մէկ անկիւնի մը մէջ եղած չէ ։
27 Մարգարէներուն կը հաւատա՞ս Ագ-
րիպպա՛ս արքայ . գիտեմ որ կը հա-
28 ւատաս ։ Եւ Ագրիպպաս ըսաւ
Պօղոսին . Քիչ մնաց որ զիս համո-
29 զես քրիստոնեայ ըլլալու ։ Պօղոս
ալ ըսաւ . Աստուծմէ կը խնդրէի
որ թէ՛ քիչով և թէ շատով՝ չէ թէ
մինակ դուն , հապա ամէնքնիդ՝ որ

Յամի Տեառն 62

Գլ. իբ. 3։ իգ. 6։ իդ. 15. 21։ Փիլ. գ. 5։ Գլ. իդ. 6։ Ծն. գ. 15։ իբ. 18։ իզ. 4։ խթ. 10։ Բ Օր. ժը. 15։ Բ Թագ. է. 12։ Սաղ. ճլբ. 11։ Ես. դ. 2։ է. 14։ թ. 6։ խ. 10։ Երեմ. իգ. 5։ լգ. 14. 15. 16։ Եզեկ. լդ. 23։ լէ. 24։ Դան. թ. 24։ Միք. է. 20։ Գլ. ժգ. 32։ Հռով. ժե. 8։ Տիտ. բ. 13։ Յակ. ա. 1։ Ղուկ. բ. 37։ Ա Տիմ. ե. 5։ Ա Թես. գ. 10։ Փիլ. գ. 11։ Յոհ. ժզ. 2։ Ա Տիմ. ա. 13։ Գլ. ը. 3։ Գաղ. ա. 13։ Գլ. թ. 14. 21։ իբ. 5։ Գլ. իբ. 19։ Գլ. թ. 3։ իբ. 6։

Յամի Տեառն 62

Գլ. իբ. 15։ Գլ. իբ. 21։ Ես. լե. 5։ խբ. 7։ Ղուկ. ա. 79։ Յոհ. ը. 12։ Բ Կոր. դ. 4։ Եփես. ա. 18։ Ա Թես. ե. 5։ Բ Կոր. զ. 14։ Եփես. դ. 18։ ե. 8։ Կող. ա. 13։ Ա Պետ. բ. 9. 25։ Ղուկ. ա. 77։ Գլ. ի. 32։ Եփես. ա. 11։ Կող. ա. 12։ Գլ. թ. 20. 22. 29։ ժա. 26։ ժգ. ժդ. ժզ. ժե. ժը. ժթ. ի. իա։ Մատ. գ. 8։ Գլ. իա. 30. 31։ Ղուկ. իդ. 27. 44։ Գլ. իգ. 21։ Ղուկ. իդ. 26. 46։ Ա Կոր. ժե. 20։ Կող. ա. 18։ Յայտ. ա. 5։ Ղուկ. բ. 32։ Եզեկ. թ. 11։ Յոհ. ժ. 20։ Ա Կոր. ա. 23։ բ. 13. 14։ դ. 10։ Ա Կոր. է. 7։

Ցամ Տեառն 62

այսօր ինծի կը լսեն, անանկ ըլլան
ինչպէս որ ես եմ, աս կապերէս 'ի
զատ ։
30 Ոտքի վրայ ելաւ թագաւորը և
կուսակալը ու Բերինիկէն, և ա-
նոնք որ իրենց հետը նստեր էին ։
31 Ու դուրս ելլելէն ետև, իրարու
հետ խօսեցան ու ըսին թէ, ᵃԱս
մարդը մեռնելու կամ կապուելու
32 արժանի բան մը չըներ ։ Ագրիպ-
պաս ալ Փեստոսին ըսաւ. Կարելի
էր աս մարդը արձակել, ʰԹէ որ
կայսրին բողոքած չըլլար ։

ᵃ Գլ. իգ. 9. 29 ։ իե. 25 ։
ʰ Գլ. իե. 11 ։

## ԳԼ. ԻԷ

1 Պօղոս նաւով ճամբայ կ'ելլէ Հռովմ երթա-
լու. 10 կը նախազգուշացնէ ճամբուն վտանգնե-
րը. 11 բայց իր խօսքին չեն հաւտար. 14
Սակայն ալէկոծութեան կը պատահին, 41 և
նաւաբեկութիւն կը կրեն, 44 բայց ամէնքն
ալ անվտանգ ցամաքը կ'ելլեն ։

1 Երբոր ᵃորոշուեցաւ որ նաւով Ի-
տալիա երթանք, Պօղոս և ու-
րիշ քանի մը կապուածներ յանձ-
նեցին հարիւրապետի մը՝ որուն ա-
նունը Յուլիոս էր, Սեբաստեան
2 գունդէն ։ Եւ մէկ Ադրամիտտացի
նաւ մը մտնելով՝ ճամբայ ելանք,
ու Ասիայի կողմերէն պիտի նաւէ-
ինք. Թեսաղոնիկէէն եղող ᵇԱրիս-
տարքոս Մակեդոնացին ալ մեր
3 հետն էր ։ Եւ հետևեալ օրը Սի-
դոն իջանք. ու Յուլիոս մարդա-
սիրութիւն ցուցընելով Պօղոսին՝
ᶜհրաման տուաւ որ բարեկամնե-
րուն երթայ, ու դարման գտնէ ։
4 Եւ անկէ ելլելով՝ Կիպրոսին վարի
կողմէն նաւեցինք՝ հովը դէմ ըլլա-
5 լուն համար ։ Եւ ծովը Կիլիկիայի ու
Պամփիլիայի ծովուն մէջտեղէն
նաւելով՝ Լիկիայի Միւռա քաղաքը
6 իջանք ։ Եւ հարիւրապետը հոն
Աղեքսանդրացի նաւ մը գտնելով՝
որ Իտալիա կ'երթար, մեզ անոր
7 մէջ մտցուց ։ Եւ շատ օրեր կա-
մաց կամաց նաւելով՝ հազիւ թէ
Կնիդոսին քովերը հասանք. և հովը
մեզի դէմ ըլլալով՝ Կրետէին վարի
կողմէն Սաղմոնայի քովէն նաւե-
8 ցինք ։ Եւ դժուարաւ անկէ անց-
նելով՝ մէկ տեղ մը եկանք, որ Գե-
ղեցիկ նաւահանգիստ կ'ըսուէր, ո-
րուն մօտ էր Ղասեա քաղաքը ։
9 Ու երբոր շատ ժամանակ անցաւ,
և նաւին ճամբայ ելլելն ալ վտան-
գաւոր էր, ᵈծոմին ատենն ալ ար-
դէն անցած ըլլալով, Պօղոս խր-
10 րատ կու տար, Եւ կ'ըսէր անոնց.
Մարդիկ՝ ես կը տեսնեմ որ աս նա-
ւիս ճամբայ ըլլալը տառապանքով
ու շատ վնասով պիտի ըլլայ, չէ
թէ միայն բեռին ու նաւին՝ հապա
11 մեր անձերուն ալ ։ Բայց հարիւ-
րապետը աւելի նաւապետին և նա-
ւավարին մտիկ կ'ընէր, քան թէ
12 Պօղոսին խօսքերուն ։ Եւ որով-
հետև ան նաւահանգիստը յարմար
չէր ձմեռը հոն անցընելու, շատերը
խորհեցան անկէ երթալ, որ դուցէ
կարող ըլլան Փիւնիկէ հասնելու ու
ձմեռը հոն կենալու, որ Կրետէի
նաւահանգիստ մըն է, ու դէպ 'ի
հարաւ և արևմտեան հիւսիս կը
13 նայի ։ Ու երբոր հարաւային մեղմ
հով մը փչեց, կարծելով թէ իրենց
դիտաւորութեանը հասեր են,
ճամբայ ելան՝ ու Կրետէին քովերէն
14 կ'անցնէին ։ Եւ շատ ատեն չանց-
ցած՝ մրրկալից հով մը ելաւ անոր
դէմ, որ Եւրակիկլոն կ'ըսուի ։
15 Երբոր նաւը յափշտակուեցաւ, և
հովին դէմ չկրցաւ դիմանալ, թող
տուած կ'երթայինք ու կու գայինք.
16 Եւ դէպ 'ի մէկ փոքր կղզիի մը ե-
տևի կողմը դիմելով՝ որ Կղօդա
կ'ըսուէր, հազիւ կրցանք մակոյկը
17 բռնել. Որն որ առին՝ ու օգնու-
թիւններ գործածելով նաւը տակէն
կապեցին. և վախնալով որ չըլ-
լայ թէ *յորձանուտը իյնան, ա-
ռագաստը իջեցուցած՝ անանկ կ'եր-
18 թային ու կու գային ։ Եւ սաստիկ
ալէկոծութեան մէջ որ էինք, հե-
տևեալ օրը բեռերը դուրս նետե-
19 ցին ։ Ու երրորդ օրը ᵉնաւին գոր-
ծիքները ձեռքովնիս դուրս նետե-
20 ցինք ։ Ու երբոր շատ օրեր ոչ
արև՝ ոչ ալ աստղեր կ'երևնային,
և փոթորիկը քիչ չէր վրանիս, ալ
բոլորովին մեր ազատուելու յոյսը
21 վերցաւ ։ Եւ որովհետև շատ օրե-
րէ 'ի վեր անօթի էին, ան ատենը
Պօղոս անոնց մէջը կայնելով՝ ըսաւ.
Ո՛վ մարդիկ՝ պէտք էր ձեզի որ
ինծի մտիկ ընէիք, ու Կրետէէն
չելլէիք, և աս տառապանքը ու
22 վնասը չքաշէիք ։ Ու հիմա ձեզ
կը յորդորեմ որ սիրտ առնէք,
քանզի ձեզմէ մէկուն անձին վնաս
մը պիտի չըլլայ՝ բայց միայն նաւին.
23 ᶠԻնչու որ աս գիշեր երևցաւ ինծի
ան Աստուծոյն հրեշտակը, որ ես
անորն եմ՝ ᵍու զանիկայ կը պաշ-
24 տեմ. Եւ ըսաւ. Մի վախնար
Պօղոս՝ կայսրին դիմացը պէտք է որ
ելլես դուն. և ահա Աստուած քե-
զի շնորհեց ան ամէնը՝ որ քու հետդ
25 նաւին մէջն են ։ Ուստի մարդիկ՝
սիրտ առէք. ʰԻնչու որ ես կը հա-
ւատամ Աստուծոյ՝ որ անանկ պիտի
ըլլայ, ինչպէս որ ինծի զրուցուե-
26 ցաւ. Միայն թէ պէտք է որ ⁱմէկ
կղզի մը իյնանք ։
27 Ու երբոր տասնուչորսերորդ գի-
շերն էր որ Ադրիական ծովուն մէջ
կը տարուբերէինք. կէս գիշերին
նաւավարները կը կարծէին թէ մէկ

ᵃ Գլ. իե. 12. 25 ։
ᵇ Գլ. ժթ. 29 ։
ᶜ Գլ. իդ. 23 ։ իը. 16 ։
ᵈ Ղև. իգ. 27, 29 ։
* կամ ծանծաղուտը
ᵉ Յովն. ա. 5 ։
ᶠ Գլ. իգ. 11 ։
ᵍ Դան. գ. 16 ։ Հռով. ա. 9 ։ բ Տիմ. ա. 3 ։
ʰ Ղու. ա. 45 ։ Հռով. դ. 20, 21 ։ բ Տիմ. ա. 12 ։
ⁱ Գլ. իը. 1 ։

Ցամ Տեառն 62

28 երկրի մը մօտեցեր են . Եւ գնտա-
կը ձգելով՝ քսան գրկաչափ գտան .
ու քիչ մըն ալ յառաջ երթալով՝
նորէն ձգեցին , և տասնուհինգ գր-
29 կաչափ գտան . Ու վախնալով՝ որ
չըլլայ թէ քարոտ տեղուանք իյ-
նան , ետևի կողմէն չորս խարիսխ
ձգեցին , և առտու ըլլալուն կը փա-
30 փաքէին ։ Իսկ նաւավարները նա-
ւէն փախչիլ ուզելով՝ մակոյկը ծովը
իջեցուցին , պատճառելով որպէս
թէ առջևի կողմէն ալ խարիսխներ
31 պիտի ձգեն ։ Բայց Պօղոս ըսաւ
հարիւրապետին ու զինուորներուն .
Թէ որ ատոնք նաւին մէջը չկե-
նան՝ դուք չէք կրնար ազատիլ ։
32 Ան ատենը զինուորները մակոյկին
չուանները կտրեցին , և թողուցին
33 որ դուրս իյնայ ։ Ու երբոր առ-
տու ըլլալու վրայ էր , Պօղոս կ'ա-
ղաչէր ամենուն որ կերակուր ու-
տեն , ըսելով . Այսօր տասնուչորս
օր է՝ որ դուք սպասելով անօթի
մնացեր էք , ու բան մը կերած
34 չէք ։ Ուստի կ'աղաչեմ ձեզի որ
կերակուր ուտէք . ինչու որ աս ալ
ձեր ազատութեանը համար է՝ ,
ծ քանզի ձեզմէ մէկուն գլխէն մազ
35 մը պիտի չկորսուի ։ Եւ այսպէս
ըսելով , հաց առաւ , ու է ամենուն
առջևը Աստուծմէ գոհացաւ , և
36 կտրելով սկսաւ ուտել ։ Եւ ամէնն
ալ սիրտ առին , ու իրենք ալ կե-
37 րակուր կերան ։ Եւ նաւին մէջը
ամէնքս երկու հարիւր եօթանա-
38 սունուվեց հոգի էինք ։ Երբոր
կշտացան կերակուրով՝ նաւը թե-
թևցուցին՝ ցորենը ծովը թափե-
լով ։
39 Ու երբոր առտու եղաւ , ցամաքը
չէին ճանչնար , միայն թէ մէկ ծոց
մը կը նշմարէին որ ծովեզերք ու-
նէր , ու կը խորհէին որ եթէ կա-
40 րելի է նաւը անոր մէջը մտնեն ։ Եւ
խարիսխները կտրելով՝ ծովը ձգե-
ցին , ու ղեկերուն կապերը թուլ-
ցուցին , և առագաստը հովին բա-
նալով՝ դէպ 'ի ան ծովեզերքը կ'եր-
41 թային ։ Եւ անանկ տեղ մը իյ-
նալով որ երկու կողմը ծով էր , նա-
ւը նստեցուցին . և նաւին առջևի
կողմը խրելով՝ անշարժ մնաց , ու
ետևի կողմը ալիքներուն սաստկու-
42 թենէն կը քակուէր ։ Զինուոր-
ներն ալ խորհուրդ ըրին որ կա-
պուածները սպաննեն , որ չըլլայ
43 թէ մէկը լողայ՝ ու փախչի ։ Բայց
հարիւրապետը որ Պօղոսը ազատել
կ'ուզէր , արգիլեց զանոնք ան խոր-
հուրդէն , և հրաման ըրաւ՝ թէ ո-
րոնք որ կրնան լողալ ; թող անոնք
առաջ նետուին ու ցամաքը ելլեն .
44 Եւ մնացածները՝ ոմանք տախտակ-

ծ Գործ . ա . 52 ։ Մատ . ժ . 30 ։ Ղուկ . ժբ . 7 ։ իա . 18 ։
է Թագ . Թ . 13 ։ Մատ . ժե . 36 ։ Մար . ը . 6 ։ Յով . զ . 11 ։ ա Տիմ . դ . 3 , 4 ։
ը Կոր . ժա . 25 ։

ներով , և ոմանք նաւին տորէն բա-
ներովը . և այսպէս է ամէնը ազա-
տեցան՝ ցամաքը ելան ։

Ցամ Տեառն 62

է Հռոմ 22 ։

ԳԼ . ԻԸ

1 Պօղոս և իր ընկերները՝ նաւաբեկութենէն ետքը մարդասիրութիւն կը տեսնեն բարբարոսներէն ։ 5 Իժ մը Պօղոսին ձեռքը կը բռնէ , բայց չվնասեր ։ 8 Պօղոս շատ հիւանդներ կը բժշկէ կղզիին մէջ . 11 Ճամբայ կ'ելլէ Հռոմ երթալու . 17 կ'իմացընէ Հրէից՝ իր գալուն պատճառը . 24 իր քարոզութեանը ոմանք կը հաւատան Քրիստոսի , ոմանք ալ չեն հաւատար . 30 այսու ամենայնիւ երկու տարի կը քարոզէ Հռովմայ մէջ ։

1 Ու երբոր ազատեցան՝ գիտցան որ
ա ան կղզիին անունը Մելիտէ
էր . Բ և բարբարոսները քիչ մար-
դասիրութիւն չցուցուցին մեզի .
2 Ինչու որ կրակ վառեցին , և մեզ
ամէնքս ալ ընդունեցին՝ վրանիս
հասած անձրևին համար , ու ցուր-
3 տին համար ։ Ու երբոր Պօղոս
շատ մը խուիւ ժողվեց , և կրակին
վրայ դրաւ , տաքութենէն իժ մը
4 ելաւ՝ անոր ձեռքը բռնեց ։ Բար-
բարոսներն ալ երբոր ան գազանը
տեսան անոր ձեռքէն կախուած՝
իրարու կ'ըսէին . Անշուշտ ասիկայ
մարդասպան մըն է , որ թէպէտ
ծովէն ազատեցաւ , Բայց իրաւուն-
5 քը թող չտուաւ որ ապրի ։ Իսկ
անիկայ գազանը կրակին մէջը
թօթվելով՝ Գ իրեն մէկ վնաս մը
6 չեղաւ ։ Ու անոնք կը սպասէին որ
անիկայ ուռենայ՝ կամ յանկար-
ծակի մեռած իյնայ . բայց երբոր
շատ մը սպասեցին , ու տեսան որ
իրեն վնաս մը չեղաւ , կարծիքնին
փոխելով , Դ կ'ըսէին թէ աստուած
7 մըն է ։ Եւ ան տեղին բոլորտիքը՝
կղզիին գլխաւոր մարդուն ագա-
րակները կային , որուն անունը
Պոպղիոս էր . որ ինքը մեզ ընդու-
նեց՝ և իրեք օր հիւրասիրութեամբ
8 իր քովը պահեց ։ Ու եղաւ որ
Պոպղիոսին հայրը ջերմով և թանչ-
քով հիւընդցած պառկած էր . ու
Պօղոս անոր քովը մտաւ , և Ե ա-
ղօթք ընելով՝ Զ ձեռքերը վրան
9 դրաւ , ու բժշկեց զանիկայ ։ Ու
երբոր ասիկայ եղաւ , ուրիշ հի-
ւանդներ որ ան կղզիին մէջն էին ,
10 կու գային և կը բժշկուէին . Որոնք
շատ Է պատիւներով ալ մեզ պա-
տուեցին , ու երթալու ատեննիս՝
պէտք եղած բաները տուին ։
11 Եւ իրեք ամիսէն ետև Աղեք-
սանդրացի նաւով մը ճամբայ ե-
լանք , որ ձմեռը ան կղզին անցու-
ցեր էր , ու Դիոսկուրացւոց նշանը
12 ունէր ։ Եւ Սիրակուսա իջնելով՝
13 իրեք օր հոն կեցանք ։ Անկէ ալ
պտոյտ մը ընելով՝ Հռէգիոն հա-
սանք . և մէկ օրէն ետև որ հարաւ

ա Գլ . իէ . 26 ։
Բ Հռոմ . ա . 14 ։ ա Կոր . ժգ . 11 ։ Կող . գ . 11 ։
Գ Մար . ժզ . 18 ։ Ղուկ . ժ . 19 ։
Դ Գլ . ժդ . 10 ։
Ե Յակ . ե . 14 . 15 .
Զ Մար . զ . 5 ։ է . 32 ։ ժզ . 18 ։ Ղուկ . գ . 41 ։ Գլ . ժթ . 11 . 12 ։ ա Կոր . ժբ . 9 . 28 ։
Է Մատ . ժե . 6 ։ ա Տիմ . ե . 17 ։

Ցա . Տ . 63

Ցամի Տեառն
63

փչեց , երկրորդ օրը Պատիողոս ե-
14 կանք ։ Ու հոն եղբայրներ գտանք ,
որոնք աղաչեցին որ եօթը օր իրենց
քովը մնանք . ու ետքը Հռովմ
15 եկանք ։ Եւ անկէ եղբայրները
երբոր մեր վրայով լսեցին , մեզ
դիմաւորելու ելան մինչեւ Ապփիոսի
վաճառանոցը՝ ու Իրեք պանդոկնե-
րը . և Պօղոս անոնք տեսնելով ,
գոհութիւն տուաւ Աստուծոյ , և
սիրտ առաւ ։
16 Ու երբոր Հռովմ մտանք , հա-
րիւրապետը կապուածները զօրա-
պետին յանձնեց . ա Իսկ Պօղոսին
հրաման եղաւ որ իր պահապան
17 զինուորին հետ զատ կենայ ։ Ու
եղաւ որ իրեք՝ օրէն ետև անիկայ
Հրէից գլխաւորները կանչեց . ու
երբոր մէկտեղ եկան՝ ըսաւ անոնց .
Մարդիկ եղբայրներ՝ բ Ես ժողո-
վուրդին կամ հայրենական սովո-
րութեանց դէմ բան մը չըրած ,
գ Երուսաղեմէն կապուած՝ Հռովմա-
18 յեցւոց ձեռքը մատնուեցայ . Ո-
րոնք դ երբոր զիս քննեցին , ուզեցին
որ արձակեն . ինչու որ իմ վրաս
19 մեռնելու յանցանք մը չկար ։ Բայց
երբոր Հրէաները հակառակ կեցան ,
ե պէտք եղաւ որ կայսրին բողոքեմ ,
չէ թէ իմ ազգիս դէմ ամբաստա-
20 նութիւն մը ունեցողի պէս ։ Ասո-
տի ասս պատճառով աղաչեցի որ
ձեզ տեսնեմ՝ ու ձեզի խօսիմ . ին-
չու որ զ Իսրայէլի յոյսին համար ես
21 է աս շղթան վրաս ունիմ ։ Անոնք
ալ ըսին իրեն . Մենք քու վրա-
յովդ Հրէաստանէն ոչ թուղթեր
առինք , և ոչ եղբայրներէն մէկը
հոս գալով՝ քու վրայովդ չարու-
թիւն մը պատմեց կամ խօսեցաւ ։
22 Բայց կ'աղաչենք որ քեզմէ լսենք՝
թէ դուն ինչ միտքի վրայ ես . ին-
չու որ մենք աս աղանդին վրայով
տեղեկացած ենք՝ որ ամէն տեղ
23 անոր դէմ է կը խօսին ։ Ու մէկ օր
մը ատեն դնելով անոր՝ շատերը
անոր գացին իր բնակած տեղը ,
ժ որոնց Աստուծոյ թագաւորու-
թիւնը կը ծանուցանէր վկայու-
թիւնով , և կը համոզէր զանոնք
Յիսուսի վրայով ի Մովսէսին օրէն-
քէն ու մարգարէներէն՝ առտուը-
24 նէ մինչև իրիկուն ։ Եւ ոմանք կը
հաւատային ըսածներուն , ու ո-
25 մանք չէին հաւատար ։ Եւ իրարու
հետ չմիաբանած գացին՝ երբոր Պօ-
ղոս մէկ խօսք մը ըսաւ , թէ Հոգին
Սուրբ աղէկ խօսեցաւ մեր հայրե-
րուն՝ Եսայի մարգարէին ձեռքովը ,
26 Եւ ըսաւ . ժա Գնա աս ժողովուրդին՝
ու ըսէ . Լսելով պիտի լսէք՝ ու
չիմանաք ; և տեսնելով պիտի տես-
27 նէք՝ ու չտեսնէք . Ինչու որ աս
ժողովուրդին սիրտը թանձրացաւ ,
և իրենց ականջներովը ծանր լսեցին ,
ու աչքերնին գոցեցին , որ չըլլայ
թէ իրենց աչքերովը տեսնեն , ու
ականջներովը լսեն , և սրտերովը
իմանան , ու դարձի գան , և ես
28 բժշկեմ զանոնք ։ Ուստի յայտնի
ըլլայ ձեզի՝ որ Աստուծոյ փրկու-
թիւնը ժբ հեթանոսներուն խրկուե-
ցաւ , և անոնք մտիկ պիտի ընեն ։
29 * Ու երբոր աս զրուցեց , Հրէաները
դուրս ելան , շատ վիճաբանութիւն
ունենալով մէջերնին” ։
30 Եւ լման երկու տարի իր վարձ-
31 քով բռնած տունը կեցաւ . Եւ
իրեն եկողներուն ամէնը կ'ընդու-
32 նէր . ժգ Կը քարոզէր Աստուծոյ թա-
գաւորութիւնը , և Տէր Յիսուս
Քրիստոսի վրայով առանց արգի-
լուելու կը սորվեցընէր բոլոր հա-
մարձակութիւնով ։

ա Գւ. իդ. 25 ։ իէ. 3 ։
բ Գւ. իդ. 12, 13 ։ իե. Տ ։
գ Գւ. իա. 33 ։
դ Գւ. իբ. 24 ։ իդ. 10 ։ իե. Տ ։ իզ. 31 ։
ե Գւ. իե. 11 ։
զ Գւ. իզ. 6, 7 ։
է Գւ. իզ. 29 ։ Եփե. գ. 1 ։ դ. 1 ։ զ. 20 ։ բ Տիմ. ա. 16 ։ բ. 9 ։ Փիլեմ. 10, 13 ։

Ցամի Տեառն
63

ը Ղու. բ. 34 ։ Գւ. իդ. 5. 14 ։ ա Պետ. բ. 12 ։ դ. 14 ։
թ Ղու. իդ. 27 ։ Գւ. ժէ. 3 ։ ժթ. Տ ։
ժ Տես Գւ. իզ. 6, 22 ։
ժ Գւ. ժդ. 4 ։ ժէ. 4 ։ ժթ. 9 ։
ժա Եսա. զ. 9 ։ Երեմ. ե. 21 ։ Եզեկ. ժբ. 2 ։ Մատ. ժգ. 14, 15 ։ Մար. դ. 12 ։ Ղու. ը. 10 ։ Յով. ժբ. 40 ։ Հռով. ժա. Տ ։
ժբ Մատ. իա. 41, 43 ։ Գւ. ժգ. 46, 47 ։ ժը. 6 ։ իբ. 21 ։ իզ. 17, 18 ։ Հռով. ժա. 11 ։
* Ոմանք չունին աս 29 համարը ։
Յա. Տ. 65
ժգ Գւ. դ. 31 ։ Եփե. զ. 19 ։

# ԹՈՒՂԹ
# ՊՕՂՈՍԻ ԱՌԱՔԵԼՈՅՆ
## ԱՌ ՀՌՈՎՄԷԱՑԻՍ

Յամի Տեառն 60

### ԳԼՈՒԽ Ա

*1 Պօղոս առաքեալ կը ծանուցանէ Հռովմայե-
ցւոց՝ իր առաքելական պաշտօնին կանչուիլը ,
9 նաև իր սրտին փափաքը՝ անոնց երթալու ,
16 և թէ ի՛նչ է իր քարոզած աւետարանը ,
ու աւետարանին ցուցուցած արդարութիւնը .
18 թէ Աստուած բարկացած է ամէն տեսակ
մեղքի դէմ , 21 և թէ հեթանոսներուն մեղ-
քերը ի՛նչ է ։*

1 Պօղոս՝ Յիսուսի Քրիստոսի ծա-
ռայ՝ առաքեալ ըլլալու կան-
չուած , Աստուծոյ աւետարանին
2 համար որոշուած , ( Զոր առա-
ջուց իր մարգարէներուն ձեռքովը
3 սուրբ գիրքերով խոստացաւ՝ ) Իր
Որդւոյն մեր Տէր Յիսուս Քրիս-
տոսին վրայով՝ որ մարմնոյ կող-
մանէ Դաւիթի սերունդէն եղաւ ,
4 Ան որ սրբութեան հոգիին կող-
մանէ Որդի Աստուծոյ յայտնուե-
ցաւ զօրութեամբ , մեռելներէն
5 յարութիւն առնելով . Որով
շնորհք և առաքելութիւն առինք՝
հաւատքի հնազանդութեան հա-
մար բոլոր ազգերուն մէջ , անոր
6 անուանը համար . Որ անոնց մէջը
դուք ալ Յիսուս Քրիստոսի կան-
7 չուած էք . Ձեր ամենուն որ Հռով-
մայ մէջ էք՝ Աստուծոյ սիրելինե-
րուդ , սուրբ ըլլալու կանչուածնե-
րուդ՝ շնորհք և խաղաղութիւն
ձեզի Աստուծմէ մեր Հօրմէն՝ ու
Տէր Յիսուս Քրիստոսէն ։
8 Նախ կը գոհանամ իմ Աստուծ-
մէս Յիսուս Քրիստոսի ձեռքովը
ձեր ամենուն համար , որ ձեր հա-
ւատքը բոլոր աշխարհ կը պատ-
9 մուի ։ Քանզի վկայ է ինծի Աս-
տուած , զորն որ ես կը պաշտեմ իմ
հոգիովս անոր Որդւոյն աւետարա-
10 նին մէջ , թէ ինչպէս անդադար
ձեզ կը յիշեմ , ամէն ատեն իմ
աղօթքներուս մէջ խնդրելով՝ որ
դուցէ անգամ մը Աստուծոյ կամ-
քովը ինծի յաջողութիւն մը ըլլայ
11 ձեզի գալու ։ Քանզի կը փափա-
քիմ ձեզ տեսնելու , որ ձեզի հո-
գևոր շնորհք մը հաղորդեմ՝ որպէս
12 զի հաստատուիք . Այսինքն՝ ձեր
հետը ես ալ մխիթարակից ըլլամ
իմ ու ձեր փոխադարձ հաւատքին
13 միջոցովը ։ Սակայն չեմ ուզեր որ
չգիտցող ըլլաք եղբայրներ՝ որ
շատ անգամ ուզեցի գալ ձեզի ,
( և մինչև հիմա արգիլուեցայ , )
որ ձեր մէջն ալ պտուղ մը ունե-
նամ , ինչպէս որ ուրիշ հեթանո-
14 սաց մէջ ալ ։ Յոյներուն ու Բար-
բարոսներուն , իմաստուններուն
ու անմիտներուն ալ պարտական
15 եմ ։ Ուստի որչափ որ ձեռքէս
կու գայ՝ յօժարութիւն ունիմ
ձեզի ալ որ Հռովմայ մէջ էք՝
աւետարանը քարոզելու ։
16 Ինչու որ Ես ամօթ չեմ սեպեր
աւետարանը . վասն զի Աստու-
ծոյ զօրութիւնն է ան՝ բոլոր հա-
ւատացեալներուն փրկութեան հա-
մար , առաջ Հրէային ու ետքը
17 Յոյնին ։ Ինչու որ անով Աստու-
ծոյ արդարութիւնը՝ որ է հաւատ-
քէն , հաւատքի համար կը յայտ-
նուի . ինչպէս որ գրուած է թէ ,
Արդարը հաւատքէն պիտի ապրի ։
18 Քանզի Աստուծոյ բարկութիւ-
նը երկինքէն կը յայտնուի մարդոց
բոլոր ամբարշտութեանը և անի-
րաւութեանը վրայ , որոնք ճշ-
մարտութիւնը անիրաւութեամբ
19 բռներ են ։ Վասն զի Աստուծոյ
վրայով գիտնալու բանը իրենց մէ-
ջը յայտնի է , որովհետև Աս-
20 տուած անոնց յայտնեց ։ Ինչու
որ իր աներևոյթ բաները աշխար-
հի ակիզբէն ստեղծուածներովը
կ'իմացուին կը տեսնուին , այսինքն
է իր մշտնջենաւոր զօրութիւնը ,
ու աստուածութիւնը . որպէս զի
21 անպատասխանի մնան ։ Ինչու որ
իրենք Աստուած ճանչնալով՝ Աս-
տուծոյ պէս չփառաւորեցին , կամ
շնորհակալ չեղան . հապա իրենց
խորհուրդներուն մէջ ունայնա-
ցան , և սիրտերնին անմտութիւ-
22 նով խաւարեցաւ ։ Իրենք իմաս-
տուն ենք ըսելով , յիմարեցան .
23 Եւ անեղծ Աստուծոյ փառքը փո-

Յամի Տեառն 60

ա Գոր . իր . 21 ։ ա Կոր . ա . 1 ։ Գաղ . ա . 1 ։ ա Տիմ . ա . 11 ։ բ . 7 ։ բ Տիմ . ա . 11 ։
բ Գոր թ . 15 ։ ժգ . 2 ։ Գաղ . ա . 15 ։
գ Գղ . գ . 21 ։ ժզ . 26 ։ Գաղ . դ . 8 ։
դ Տես Գոր . իգ . 6 ։ Տիտ . ա . 2 ։
ե Յօհ . ա . 14 ։ Գաղ . դ . 4 ։
զ Մատ . ա . 6 . 16 ։ Ղու . ա . 32 ։ Գոր . բ . 30 ։ բ Տիմ . բ . 8 ։
է Գոր . ժգ . 33 ։
ը Եբր . թ . 14 ։
թ Գղ . ժբ . 3 ։ ժե . 15 ։ ա Կոր . ժե . 10 ։ Գաղ . ա . 15 ։ բ . 9 ։ Եփե . գ . 8 ։
ժ Գոր . զ . 7 ։ Գղ . ժզ . 26 ։
ի Գոր . թ . 15 ։
լ Գղ . թ . 24 ։ ա Կոր . ա . 2 ։ ա Թես դ . 7 ։
խ ա Կոր . ա . 3 ։ բ Կոր . ա . 2 ։ Գաղ . ա 3 ։
ծ ա Կոր . ա 4 ։ Փիլ ա 3 ։ Կող . ա . 3 . 4 ։ ա Թես . ա . 2 ։ Փիլիմ 4 ։
կ Գղ . ժզ 19 ։ ա Թես . ա . 8 ։
հ Գղ . թ 1 ։ բ Կոր ա 23 ։ Փիլ ա 8 ։ ա Թես . բ . 5 ։
ձ Գոր . իէ . 23 ։ բ Տիմ . ա . 3 ։
ղ ա Թես դ 10 ։
ճ Գղ ժե . 23 . 32 ։ ա Թես . գ 10 ։
մ Յակ դ . 15 ։
յ Գղ . ժե 29 ։

Յամի Տեառն 60

ն Տիտ . ա . 4 ։ բ Պետ . ա . 1 ։
շ Գղ . ժե . 23 ։
ո Տես Գոր . ժզ . 7 ։ ա Թես . բ . 18 ։
չ Փիլ . դ . 17 ։
պ ա Կոր . թ . 16 ։
ջ Սաղ . խ . 9 . 10 ։ Մար . ը ; 38 ։ բ Տիմ . ա . 8 ։
* Ոմանք՝ Քրիստոսի աւետարանը .
ռ ա Կոր . ա . 18 ։ ժե . 2 ։
ս Ղու . բ . 30 . 31 . 32 ։ իդ . 47 ։ Գոր . գ . 26 ։ ժգ . 26 . 46 ։ Գղ . բ . 9 ։
վ Գղ . գ . 21 ։
տ Ամբ . բ . 4 ։ Յօհ . գ 36 ։ Գաղ . գ . 11 ։ Փիլ . գ . 9 ։ Եբր . ժ . 38 ։
ր Գոր . ժէ . 30 ։ Եփե . ե . 6 ։ Կող . գ . 6 ։
ց Գոր . ժդ . 16 ։
ւ Յօհ . ա . 9 ։
փ Սաղ . ժթ . 1 ։ Գոր . ժդ . 16 ։ ժէ . 27 ։
ք Դթաց . ժէ . 15 ։ Երեմ . բ . 5 ։ Եփե . դ . 17 . 18 ։
օ Երեմ . ժ . 14 ։
ֆ բ Օր . դ . 16 ։ Սաղ . ճզ . 20 ։ Ես . խ . 18 . 25 ։ Երեմ . բ . 11 ։ Եզեկ . ը 10 ։ Գոր . ժէ . 29 ։

Յամի Տեառն
60

ա Սաղ. ճե. 12. Փոր. է. 42. Եփե. դ. 18. 19. բ Թես. բ. 10.
բ Ղև. ժը. 22.
գ ա Կոր. զ. 18. ա Թես. դ. 4. ա Պետ. դ. 3.
դ ա Թես. ա. 9. ա Յով. ե. 20.
ե Ես. խդ. 20. Երեմ. ժ. 14. ժզ. 25. Ամով. բ. 4.
զ Ղև. ժը. 22. 23. Եփե. ե. 12. Յուդ. 10.
է Եփե. ե. 3.
ը Գղ. բ. 2.
թ Գղ. զ. 21.
ժ Ովս. է. 3. Սաղ. ծ. 18.
ա Գղ. ա. 20. բ Թագ. ժբ. 5. 6. 7. Մատ. է. 1. 2. Յով. ը. 9.

խեցին՝ նմանցնելով եղծանելի
մարդու, և թռչուններու, ու
չորքոտանիներու, և սողուններու
24 պատկերին ։ ա Անոր համար Աս-
տուած ալ պղծութեան մատնեց
զանոնք իրենց սիրտերուն ցանկու-
թիւններովը՝ բ իրենց մարմինները
գ իրենց անձերուն մէջ խայտառա-
25 կելու ․ Որոնք Աստուծոյ դ ճշմար-
տութիւնը՝ ե սուտի հետ փոխեցին,
ու երկրպագութիւն և պաշտօն
մատուցին ստեղծուածներուն՝ քան
թէ Ստեղծողին, ան որ յաւիտեան
26 օրհնեալ է ․ ամէն ։ Անոր համար
Աստուած զանոնք զ անարգ կիրքե-
րու մատնեց, որ իրենց էգերը ան-
գամ բնական պէտքը բնութեան
27 դէմ եղող պէտքի փոխեցին ։ Նոյն-
պէս ալ արուները կնկան բնական
պէտքը թողուցած՝ իրենց ցանկու-
թիւնովը իրարու հետ վառուե-
ցան ․ արուները արուներու հետ
խայտառակութիւն կը գործէին,
և իրենց մոլութեանը վայլած հա-
տուցումը իրենց վրայ կ'ընդունէ-
28 ին ։ Եւ որովհետև չուզեցին զԱս-
տուած իրենց գիտութեանը մէջ
պահել, Աստուած ալ զանոնք ա-
նարգ խորհուրդներու մատնեց՝
29 է անվայել բաներ ընելու ․ Որոնք
լեցուած էին ամէն անիրաւութիւ-
նով, պոռնկութիւնով, անզգա-
մութիւնով, ագահութիւնով,
չարութիւնով, նախանձով լե-
ցուն, մարդասպանութիւնով,
հակառակութիւնով, նենգու-
թիւնով, չարասրտութիւնով,
30 ը էին քսուներ, Չարախօսներ,
Աստուած ատողներ, նախատող-
ներ, հպարտներ, ամբարտաւան-
ներ, չար բաներ հնարողներ, ծնո-
31 ղաց անհնազանդներ, Անմիտներ,
ուխտ չպահողներ, անգութներ,
32 անհաշտներ, անողորմներ ․ թ Ո-
րոնք գիտնալով Աստուծոյ դա-
տաստանը, թէ անոնք որ ասանկ
բաներ կ'ընեն՝ ժ մահուան արժանի
են, չէ թէ միայն ան բաները կ'ը-
նեն, հապա ընողներուն հաւա-
նութիւն ալ կու տան ։

ԳԼ․ Բ

1 Անոնք որ ուրիշները կը դատապարտեն իբրև մեղաւորներ, թէ որ իրենք ալ ան մեղքերը կը գործեն, չեն կրնար ինքզինքնին արդարացընել․ 6 ո՛չ ալ կրնան ազատ մնալ Աստուծոյ դատաստանէն․ 9 թէ՛ Հրէայ ըլլան՝ թէ հեթանոս․ 14 քանզի ինչոր որ հեթանոսները չեն կրնար ազատ մնալ, 17 անանկ ալ Հրէաները․ 25 որոնց թլփատութիւնը օգուտ մը պիտի չընէ, թէ որ օրինազանց գտնուին․

1 Ուստի ո՛վ մարդ՝ ա ո՛վ որ ըլլաս
դուն որ կը դատես, պատասխան
չունիս տալու․ բ քանզի ինչ
բանով որ ուրիշը կը դատես, անով
քու անձդ կը դատապարտես․ վասն
զի դուն ալ որ կը դատես, նոյն
2 բաները կ'ընես ։ Բայց գիտենք որ
Աստուծոյ դատաստանը ճշմար-
տութիւնով կ'ըլլայ անոնց վրայ,
3 որ անանկ բաներ կը գործեն ։ Արդ՝
ո՛վ մարդ, դուն որ ասանկ բաներ
ընողները կը դատես, և դուն նոյն
բաները կ'ընես, աս միտքէդ կ'ան-
ցընե՞ս, թէ դուն Աստուծոյ դա-
տաստանէն ազատ պիտի մնաս ․
4 գ Կամ թէ անոր անչափ քաղցրու-
թիւնը՝ դ և համբերութիւնը ե ու
երկայնմտութիւնը կ'արհամար-
հե՞ս, զ չգիտնալով որ Աստուծոյ
քաղցրութիւնը քեզ դէպ 'ի ա-
պաշխարութիւն կ'առաջնորդէ ։
5 Բայց դուն քու խստութիւնովդ և
անզեղջ սրտովդ քու անձիդ բար-
կութիւն կը դիզես՝ է բարկութեան
և Աստուծոյ արդար դատաստանին
6 յայտնուելու օրուանը համար․ ը Ան
որ ամէն մէկուն իր գործքերուն
փոխարէնը պիտի հատուցանէ ․
7 Յաւիտենական կեանքը՝ անոնց՝ որ
բարի գործքերու մէջ համբերու-
թեամբ յարատևելով, փառք ու
պատիւ և անմահութիւն կը խընդ-
8 րեն ։ Բայց անոնց որ հակառակ
են, թ և ճշմարտութեան անհնա-
զանդ՝ ու անիրաւութեան հնազան-
դած, բարկութիւն և սրտմտու-
9 թիւն՝ նեղութիւն և տառապանք
պիտի ըլլայ ամէն մարդու վրայ՝ որ
չար կը գործէ, ժ առաջ Հրէային
10 ու ետքը Յոյնին ․ Իսկ փառք ու
պատիւ և խաղաղութիւն ան ամէ-
նուն՝ որ բարի կը գործէ, առաջ
11 Հրէային ու ետքը Յոյնին ։ ի Ին-
չու որ Աստուծոյ քովը աչառու-
12 թիւն չկայ ․ Քանզի անոնք որ ա-
ռանց օրէնքի մեղք գործեցին, ա-
ռանց օրէնքի պիտի կորսուին ․ և
անոնք որ օրէնքի տակ մեղք գոր-
ծեցին, օրէնքով պիտի դատուին ․
13 ( ի Ինչու որ չէ թէ օրէնքը լսողները
Աստուծոյ առջևը արդար են, հա-
պա օրէնքը կատարողները պիտի
14 արդարանան ։ Ուստի հեթանոս-
ները որ օրէնք չունին՝ երբոր բնա-
կանաբար օրէնքին գործքերը կը
գործեն, օրէնք չունենալով՝ իրենց
անձերուն օրէնքը իրենք կ'ըլ-
15 լան ․ Որ օրէնքին գործքը իրենց
սրտին մէջը գրուած կը ցուցընեն
իրենց խղճմտանքին վկայութեամ-
բը, և իրենց խորհուրդներուն իրար
յանդիմանելովը՝ կամ իրաւունք
16 տալովը ․ ) ժ Ան օրը որ Աստուած
մարդոց ծածուկ բաները պիտի դա-
տէ ի Յիսուս Քրիստոսի ձեռքովը՝
ի իմ աւետարանիս համե-
մատ ։

Յամի Տեառն
60

գ Գղ. թ. 23. Եփե. ա. 7. բ. 4. 7.
դ Գղ. գ. 25.
ե Ել. լդ. 6.
զ Եփ. լ. 18. բ Պետ. գ. 9. 15.
է բ Օր. լբ. 35. Յակ. ե. 3.
ը Յոբ. լդ. 11. Սաղ. կբ. 12. Առակ. իդ. 12. Երեմ. ժէ. 10. լբ. 19. Մատ. ժզ. 27. Գղ. ժդ. 12. ա Կոր. գ. 8. բ Կոր. ե. 10. Յայտ. բ. 23. ի. 12. իբ. 12.
թ Յոբ. իդ. 13. Գղ. ա. 18. բ Թեսա. ա. 8.
ժ Ամով. գ. 2. Ղու. ժբ. 47. 48. ա Պետ. դ. 17.
ի ա Պետ. ա. 7.
ւ բ Օր. ժ. 17. բ Մն. ժթ. 7. Յոբ. լգ. 19. Գործ. ժ. 34. Գաղ. բ. 6. Եփե. զ. 9. Կող. գ. 25. ա Պետ. ա. 17.
ի Մատ. է. 21. Յակ. ա. 22. 23. 25. ա Յով. գ. 7.
ժ Ժող. ժբ. 14. Մատ. իե. 31. Յով. ժբ. 48. Գղ. դ. 6. ա Կոր. դ. 5. Յայտ. ի. 12.
ի Յով. ե. 22. Գործ. ժ. 42. ժէ. 31. բ Տիմ. դ. 1. 8. ա Պետ. դ. 5.
ւ Գղ. ժզ. 25. ա Տիմ. ա. 11. բ Տիմ. բ. 8.

Ցամ Տեառն 60

Մատ. գ. 9: Յով. ը. 33: Գղ. թ. 6. 7: բ Կոր. ժա. 22: Միք. գ. 11: Գղ. թ. 4: Ես. խե. 25: խը. 2: Յով. ը. 41: Օր. դ. 8: Սաղ. ճխէ. 19. 20: Փիլ. ա. 10: Մատ. ժե. 14: իգ. 16. 17. 19. 24: Յով. թ. 34. 40. 41: Գղ. գ. 17: բ Տիմ. ա. 13: գ. 5: Սաղ. ծ. 16: Մատ. իդ. 3: Սաղ. գ. 8: Հռ 17: Թագ. ժբ. 14: Ես. ծբ. 5: Եզեկ. լզ. 20. 23: Գաղ. ե. 3. Կոր. ժ. 34. 35: Մատ. ժբ. 41. 42: Մատ. գ. 9: Յով. ը. 39: Գղ. թ. 6. 7: Գաղ. զ. 15: Յայտ. բ. 9: Պետ. գ. 4: Կող. բ. 11: Փիլ. գ. 3: Գղ. է. 6: բ Կոր. գ. 6: Կոր. դ. 5: բ Կոր. ժ. 18: Թես. բ. 4:

17 Ահա դուն Հրեայ ըսուեր ես,
ու օրէնքին կռթըներ ես, ու Աս-
18 տուծով կը պարծենաս, Եւ անոր
կամքը գիտես, ու տարբեր բանե-
րը կը զանազանես՝ օրէնքէն խրա-
19 տուած ըլլալով. Եւ քու անձիդ
վրայ վստահութիւն ունիս՝ թէ
կոյրերուն առաջնորդ ես, խաւա-
20 րածներուն լոյս, Անմիտներուն խը-
րատ տուող, տղայոց վարժապետ.
և թէ գիտութեան ու ճշմարտու-
թեան կերպարանքը օրէնքէն ու-
21 նիս: Իսկ արդ՝ դուն որ ընկե-
րիդ կը սորվեցընես, քու անձիդ
չե՞ս սորվեցըներ. որ կը քարոզես
գողութիւն չընել, կը գողնա՞ս.
22 Որ կ'ըսես շնութիւն չընել, շնու-
թի՞ւն կ'ընես. որ կը զզուիս կուռ-
քերէն, սրբապղծութի՞ւն կ'ընես.
23 Որ օրէնքով կը պարծենաս, օրի-
նազանց ըլլալով՝ զԱստուա՞ծ կ'ա-
24 նարգես: Ինչու որ Աստուծոյ ա-
նունը ձեր պատճառովը հեթանո-
սաց մէջ կը հայհոյուի, ինչպէս
որ գրուած է:
25 Արդ՝ թլփատութիւնը շահ կ'ու-
նենայ, թէ որ օրէնքը պահես.
իսկ թէ որ օրէնքին դէմ յանցաւոր
ես, քու թլփատութիւնդ անթլ-
26 փատութիւն եղաւ: Ուստի թէ որ
անթլփատութիւնը օրէնքին իրա-
ւունքները պահէ, չէ՞ որ անոր ան-
թլփատութիւնը թլփատութիւն
27 պիտի սեպուի. Եւ ի բնէ եղած
անթլփատութիւնը օրէնքը կատա-
րելով՝ պիտի դատապարտէ քեզ,
որ գիրով ու թլփատութիւնով
28 օրէնքին յանցաւոր ես: Ինչու որ
Հրեայ չէ ան՝ որ դրսուանց է, և
թլփատութիւն չէ ան՝ որ դրսուանց
29 մարմինով է. Հապա հրեայ ան է՝
որ ներսուանց է, և թլփատու-
թիւն սրտինը՝ հոգիով, ու չէ
թէ գիրով. որուն գովութիւնը
չէ թէ մարդիկներէն է, հապա Աս-
տուծմէ:

## ԳԼ. Գ

1 Հրէից առաւելութիւնը, 3 որոնք որ բնաւ չկորսընցուցին. 9 բայց օրէնքը կը ցուցընէ թէ անոնք ալ մեղքի տակ են. 20 ուստի բնաւ մարմին մը չարդարանար օրէնքով, 28 այլ ամէն մարդիկ առանց խտրութեան միայն հաւատքով կ'արդարանան. 31 սակայն ասով օրէնքը չխափանուիր:

Օր. դ. 7. 8: Սաղ. ճխէ. 19. 20: Գղ. ը. 15: թ. 4: Գղ. ժ. 16: Եբր. դ. 2: Թու. իգ. 19: Գղ. թ. 6: ժա. 29: բ Տիմ. բ. 13: Յոբ. խ. 8:

1 Ուրեմն Հրէան ի՞նչ աւելի բան
ունի, կամ թլփատութենէն
2 ի՞նչ շահ կայ: Շատ՝ ամէն
կերպով. պինտ առաջ ան՝ որ
Աստուծոյ պատգամները անոնց
3 հաւատացուեցաւ: Ուրեմն թէ
որ անոնցմէ ոմանք չհաւատացին,
ի՞նչ. միթէ անոնց անհաւատու-
թիւնը Աստուծոյ հաւատքը կը
4 խափանէ՞ր. Քաւ լիցի: Սակայն
Աստուած ճշմարիտ թող ըլլայ,
և բոլոր մարդիկ՝ սուտ. ինչպէս
որ գրուած է. Որ քու խօսքերուդ
մէջ արդար ըլլաս, և դատուելու
5 ատենդ դուն յաղթես: Ուրեմն թէ
որ մեր անիրաւութիւնը Աստուծոյ
արդարութիւնը յայտնի կը ցու-
ցընէ, ի՞նչ ըսենք. արդեօք ա-
նիրաւ է Աստուած՝ որ իր բարկու-
6 թիւնը վրանիս կը բերէ. (Մարդ-
կօրէն կ'ըսեմ.) Քաւ լիցի. Հա-
պա թէ չէ՝ ի՞նչպէս Աստուած պի-
7 տի դատէ աշխարհը: Ինչու որ եթէ
Աստուծոյ ճշմարտութիւնը իմ սը-
տութիւնովս կ'աւելնայ իր փառ-
քին համար, ալ ես ինչո՞ւ մեղա-
8 ւորի մը պէս կը դատուիմ: Եւ
ինչո՞ւ համար պէտք չէ ըսել, ինչպէս
որ ոմանք մեր վրայ չարախօսու-
թիւն ընելով կ'ըսեն՝ թէ մենք կ'ը-
սենք, Չարը գործենք՝ որ բարին
գայ. որոնց դատապարտութիւնը
իրաւունքով է:
9 Ուստի ալ ի՞նչ ըսենք. բանով
մը աւելի՞ ենք հեթանոսներէն. ի-
րաւ որ բանով մըն ալ չէ. ինչու որ
առաջուց մեղադրեցինք Հրեաները
և հեթանոսները՝ թէ ամէնքը մե-
10 ղաց տակ են. Ինչպէս որ գրուած
է թէ, Արդար մը չկայ՝ ո՛չ մէկ
11 հատ մը. Մէկը չկայ որ հասկը-
նայ, մէկը չկայ՝ որ Աստուած փըն-
12 տռէ: Ամէնքը խոտորեցան,
մէկտեղ անպիտան եղան. աղէկու-
թիւն ընող մը չկայ, մէկ մըն ալ
13 չկայ: Անոնց կոկորդը բաց գե-
րեզման է. իրենց լեզուովը նենգա-
ւոր եղան. Իժերու թոյն կայ
14 անոնց շրթունքներուն տակը. Ա-
նոնց բերանը անէծքով ու դառ-
15 նութեամբ լեցուն է. Անոնց ոտ-
քերը շուտ են արիւն թափելու.
16 Կործանում և թշուառութիւն կայ
17 իրենց ճամբաներուն մէջը. Եւ
խաղաղութեան ճամբան չճանչ-
18 ցան: Աստուծոյ վախը չկայ ա-
19 նոնց աչքերուն առջին: Սա-
կայն գիտենք որ օրէնքը ինչ որ
կ'ըսէ, անոնց կ'ըսէ՝ որ օրէնքին
տակն են. որպէս զի ամէն բերան
գոցուի, և բոլոր աշխարհ դատա-
պարտուած ըլլայ Աստուծոյ առ-
20 ջեւ: Ինչու որ անոր առջեւ մէկ
մարմին մը պիտի չարդարանայ օ-
րէնքին գործքերովը. քանզի օ-
րէնքով է մեղքը ճանչնալը:
21 Բայց հիմա առանց օրէնքի Աս-
տուծոյ արդարութիւնը յայտ-
նուած է, օրէնքէն և մարգարէ-
22 ներէն վկայուած ըլլալով. Այս-
ինքն Աստուծոյ արդարութիւնը՝ որ
Յիսուս Քրիստոսի հաւատքէն է,
ամէնուն յայտնուած է, ու ամէնուն

Ցամ Տեառն 60

Յով. գ. 33: Սաղ. կբ. 9: Ժզ. 11: Սաղ. ծա. 4: Գղ. գ. 19: Գաղ. գ. 15: Ծն. ժը. 25: Յոբ. ը. 3: լդ. 17: Գղ. ե. 20: գ. 1. 15: Հռ 23: Գաղ. գ. 22: Սաղ. ժգ. 1. 2. 3: ծգ. 1: Սաղ. ե. 9: Երեմ. ե. 16: Սաղ. ճխ. 3: Սաղ. ժ. 7: Առակ. ա. 16: Ես. ծթ. 7. 8: Սաղ. լզ. 1: Յով. ժ. 34: ժե. 25: Յոբ. ե. 16: Սաղ. ճէ. 42: Եզեկ. ժզ. 63: Գղ. ա. 20: բ. 1: Հռ 9. 23: Գղ. բ. 2: Սաղ. ճխգ. 2: Գոր. ժգ. 39: Գաղ. բ. 16: գ. 11: Եփե. բ. 8. 9: Տիտ. գ. 5: Գղ. է. 7: Գոր. ժե. 11: Գղ. ա. 17: Փիլ. գ. 9: Եբր. ժա. 4, 26: Յով. ե. 46: Գոր. իգ. 22: Գղ. ա. 2: ա Պետ. ա. 10: Գղ. գ.

Ցամի Տեառն 60

ա Գղ. Ժ. 12։ Գաղ. Գ. 28։ Կող. Գ. 11։
բ Հմր 9։ Գղ. Ժա. 32։ Գաղ. Գ. 22։
գ Գղ. Դ. 16։ Եփե. Բ. 8։ Տիտ. Գ. 5, 7։
դ Մատ. Ի. 28։ Եփե. Ա. 7։ Կող. Ա. 14։ Ա Տիմ. Բ. 6։ Եբր. Թ. 12։ Ա Պետ. Ա. 18, 19։
ե Ղև. Ժզ. 15։ Ա Յով. Բ. 2։ Դ. 10։
զ Կող. Ա. 20։
է Գոր. Ժգ. 38, 39։ Ա Տիմ. Ա. 15։
ը Գոր. Ժէ. 30։ Եբր. Թ. 15։
թ Գղ. Բ. 17, 23։ Դ. 2։ Ա Կոր. Ա. 29, 31։ Եփե. Բ. 9։
ժ Գոր. Ժգ. 38, 39։ Հմր 20, 21, 22։ Գղ. Ը. 3։ Գաղ. Բ. 16։
ի Գղ. Ժ. 12, 13։ Գաղ. Գ. 8, 20, 28։

ա Եսա. Ծա. 2։ Մատ. Գ. 9։ Յով. Ը. 33, 39։ Բ Կոր. Ժա. 22։
բ Գղ. Գ. 20, 27, 28։
գ Ծն. Ժե. 6։ Գաղ. Գ. 6։ Յակ. Բ. 23։
դ Գղ. Ժա. 6։
ե Յեսու. Իդ. 2։
զ Սաղ. Լբ. 1, 2։

վրայ ըլլայ. Չև խտրութիւն չկայ ։
23 Ինչու որ ամէնքը մեղք գործեցին,
և Աստուծոյ փառքէն պակսած են ։
24 Եւ անոր շնորհքովը ձրի կ'արդա-
րանան Քրիստոս Յիսուսով եղած
25 փրկութեամբը. Որ զանիկայ առա-
ջուց սահմանեց Աստուած՝ հա-
ւատքով քաւութիւն ըլլալ անոր
արիւնովը, Աստուծոյ երկայնմտու-
թեան ատենները առաջուց գոր-
ծուած մեղքերուն թողութիւն
տալովը՝ իր արդարութիւնը ցուցը-
26 նելու համար. Այսինքն իր արդա-
րութիւնը աս ժամանակիս մէջ
ցուցընելու համար, որ ինքը արդար
ըլլայ, և արդարացընէ Յիսուսի
27 հաւատքէն եղողը ։ Ուրեմն ո՞ւր
մնաց պարծենալը. խափանեցաւ.
ո՞ր օրէնքէն, գործքերո՞ւն օրէնքէն.
չէ՛, հապա հաւատքի օրէնքէն ։
28 Ինչու որ կը սեպենք թէ մարդը
հաւատքով կ'արդարանայ՝ առանց
29 օրէնքին գործքերուն ։ Միթէ Աս-
տուած միայն Հրէաներո՞ւնն է, ու
հեթանոսներունը չէ՞. այո՛, հե-
30 թանոսներունն ալ ։ Որովհետև
Աստուած մէկ է՝ որ թլփատու-
թիւնը հաւատքէն կ'արդարացընէ,
և անթլփատութիւնը նոյն հաւատ-
31 քով ։ Ուստի մենք հաւատքով
օրէնքը կը խափանե՞նք. քաւ լի-
ցի. հապա օրէնքը կը հաստա-
տենք ։

## ԳԼ. Դ

1 Աբրահամին հաւատքը իրեն արդարութիւն սեպուեցաւ՝ 10 իր թլփատուելէն առաջ ։ 13 Միայն հաւատքով ինքը ու իր սերունդը խոստմունք առին ։ 16 Աբրահամ բոլոր հաւատացեալներուն հայրն է ։ 24 Մեր հաւատքն ալ մեզի արդարութիւն պիտի սեպուի ։

1 Ուրեմն ի՞նչ պիտի ըսենք թէ
գտաւ Աբրահամ մեր նահա-
2 պետը մարմնոյ կողմանէ ։ Ինչու
որ եթէ Աբրահամ գործքով ար-
դարացած ըլլար, իրաւցընէ պար-
ծանք կ'ունենար, բայց չէ թէ
3 Աստուծոյ առջևը ։ Քանզի գիր-
քը ի՞նչ կ'ըսէ. Աբրահամ Աս-
տուծոյ հաւատաց, և ան իրեն
4 արդարութիւն սեպուեցաւ ։ Բայց
ան որ գործ մը կ'ընէ, վարձքը՝
շնորհքէ եղած չսեպուիր անոր,
5 հապա պարտքէ ։ Իսկ ան որ չը-
գործեր, բայց կը հաւատայ անոր՝
որ ամբարիշտը կ'արդարացընէ,
անոր հաւատքը իրեն արդարու-
6 թիւն կը սեպուի ։ Ինչպէս որ
Դաւիթ ալ կը գրուցէ ան մար-
դուն երանութիւնը, որուն Աս-
տուած արդարութիւն կը սեպէ՝
7 առանց գործքերու ։ Երանի ա-
նոնց՝ որոնց անօրէնութիւն-
ները ներուեցան, և որոնց մեղքերը
8 ծածկուեցան ։ Երանի ան մար-
դուն՝ որ Տէրը մեղք չսեպեր անոր ։
9 Ուստի աս երանութիւնը թլփա-
տութեա՞ն վրայ է, թէ անթլփա-
տութեան վրայ ալ. քանզի կ'ը-
սենք թէ՝ հաւատքը Աբրահամին
10 արդարութիւն սեպուեցաւ ։ Ու-
րեմն ինտո՞ր սեպուեցաւ. թլփա-
տութեա՞ն մէջ եղած ատենը, թէ
անթլփատութեան մէջ. չէ՛ թէ
թլփատութեան մէջ, հապա ան-
11 թլփատութեան ։ Ու թլ-
փատութեան նշանը առաւ՝ իբրև
անթլփատութեան ատենէն ունե-
ցած հաւատքին արդարութեանը
մէկ կնիք մը, որ ինքը հայր ըլլայ
ան բոլոր հաւատացողներուն՝ ո-
րոնք անթլփատութենէ են, (ա-
նոնց ալ արդարութիւն սեպուելու
12 համար,) Եւ հայր թլփատութեան՝
չէ թէ միայն թլփատութենէ ե-
ղողներուն, հապա անոնց ալ՝ որ
մեր հօրը Աբրահամին անթլփատու-
թեան ատենի հաւատքին շաւիղ-
13 ներուն մէջը կը քալեն ։ Ինչու որ
Աբրահամին և անոր սերունդին՝
աշխարհը ժառանգելու համար
տրուած խոստմունքը չէ թէ օրէն-
քով եղաւ, հապա հաւատքին ար-
14 դարութիւնովը ։ Քանզի եթէ
օրէնքէն եղողները ժառանգ ըլլան,
հաւատքը փուճ պիտի ըլլար,
և խոստմունքը պիտի խափանուէր ։
15 Վասն զի օրէնքը բարկութիւն կը
գործէ. քանզի ուր որ օրէնք չը-
կայ, օրինազանցութիւն ալ չկայ ։
16 Ասոր համար ժառանգ ըլլալը հա-
ւատքէն է, որ շնորհքով եղած
ըլլայ, խոստմունքը հաստատուն
ըլլալու համար բոլոր սերունդին.
չէ թէ միայն անոր՝ որ օրէնքէն է,
հապա անոր ալ՝ որ Աբրահամին
հաւատքէն է. որ մեր ամենուն
17 հայրն է, (Ինչպէս որ գրուած է
թէ, Քեզ շատ ազգերու հայր ը-
րի,) Աստուծոյ առջևը, որուն
ինքը հաւատաց, ան որ մեռելնե-
րը կ'ողջնցընէ, և չեղած բանե-
18 րը եղածներու պէս կը կանչէ ։ Որ
չյուսացուելու բանին յուսով հա-
ւատաց՝ թէ ինքը շատ ազգերու
հայր պիտի ըլլայ, (ինչպէս որ ը-
սուեցաւ ալ թէ, Քու սերունդդ
19 ասանկ պիտի ըլլայ.) Եւ ինքը
հաւատքի մէջ չտկարացած, չը-
նայեցաւ իր մարմնին արդէն մե-
ռածի պէս ըլլալուն, (որովհե-
տև ինքը հարիւր տարեկանի չափ
էր.) ոչ ալ Սառային արգան-
20 դին մեռած ըլլալուն ։ Եւ ան-
հաւատութիւնով չտարակուսե-
ցաւ Աստուծոյ խոստմունքէն.
հապա հաւատքով զօրացած՝ Աս-

Ցամի Տեառն 60

ա Ծն. Ժէ. 10։
բ Ղուկ. Ժթ. 9։ Հմր 12, 16։ Գաղ. Գ. 7։
գ Ծն. Ժէ. 4, ԻԲ։ Գաղ. Գ. 29։
դ Գաղ. Գ. 18։
ե Գղ. Գ. 20։ Ե. 13, 20։ Է. 8, 10, 11։ Ա Կոր. Ժե. 56։ Բ Կոր. Գ. 7, 9։ Գաղ. Գ. 10, 19։ Ա Յով. Գ. 4։
զ Գղ. Գ. 24։
է Գաղ. Գ. 22։
ը Եսա. Ծա. 2։ Գղ. Թ. 8։
թ Ծն. Ժէ. 5։
ժ Գղ. Ը. 11։ Եփե. Բ. 1, 5։
ի Գղ. Թ. 25։ Ա Կոր. Ա. 28։ Ա Պետ. Բ. 10։
լ Ծն. Ժե. 5։
խ Ծն. Ժէ. 17։ ԺԸ. 11։ Եբր. ԺԱ. 11, 12։

Յամի Տեառն 60

21 տուծոյ փառք տուաւ , Եւ իր
մտքին մէջ հաստատ պահեց՝ թէ
ան որ խօսք տուաւ , ինքը կարող է
22 ընելու ալ ։ Ասոր համար իրեն
արդարութիւն սեպուեցաւ ։
23 Բայց չէ թէ մինակ անոր համար
գրուեցաւ՝ որ իրեն սեպուեցաւ .
24 Հապա մեզի համար ալ՝ որոնց պի-
տի սեպուի , որ կը հաւատանք ա-
նոր՝ որ մեռելներէն յարոյց մեր Տէր
25 Յիսուսը . Ան որ մեր յանցանացը
համար մատնուեցաւ , և մեզ ար-
դարացընելու համար յարութիւն
առաւ ։

## ԳԼ . Ե

1 Հաւատքով արդարացած՝ խաղաղութիւն ունինք Աստուծոյ հետ , 2 և պարծանք մեր յուսոյն մէջ . 8 վասն զի թէ որ Քրիստոսի արիւնովը հաշտուեցանք՝ թշնամի եղած ատեննիս , 10 ալ աւելի պիտի ապրինք հաշտուած ըլլալովնիս ։ 12 Ինչպէս որ մեղքը ու մահը աշխարհ մտան Ադամով , 17 ալ աւելի արդարութիւնը և կեանքը Յիսուս Քրիստոսով ։ 20 Ո՛ւր որ մեղքը շատցաւ , հոն շնորհքը աւելի առատացաւ ։

1 Ուստի մենք հաւատքով արդարա-
ցած ըլլալով՝ խաղաղութիւն
ունինք Աստուծոյ հետ՝ մեր Տէրոջը
2 Յիսուս Քրիստոսի ձեռքովը ։ Ո-
րուն միջոցովը ընդունեցինք հա-
ւատքով աս շնորհքիս մօտենալն
ալ , որուն մէջը կեցեր ենք , և Աս-
տուծոյ փառաց յուսովը կը պար-
3 ծինք ։ Եւ ոչ միայն այսչափ , հա-
պա նաև նեղութիւններու մէջ կը
պարծինք . ինչու որ գիտենք՝ թէ
նեղութիւնը համբերութիւն կը
4 գործէ , Եւ համբերութիւնը՝
փորձառութիւն , ու փորձառու-
5 թիւնը՝ յոյս . Եւ յոյսը ամօթով
չձգեր . ինչու որ Աստուծոյ սէրը
մեր սրտերուն մէջը տարածուած է
Հոգւոյն Սրբոյ ձեռքովը , որ մեզի
6 տրուեցաւ ։ Վասն զի երբոր մենք
դեռ տկար էինք , յարմար ժամա-
նակին Քրիստոս ամբարիշտներուն
7 համար մեռաւ ։ Ինչու որ արդարի
մը համար հազիւ կ'ըլլայ որ մէկը
մեռնի . (բայց մէկ բարի մարդու
մը համար՝ կարելի է որ մէկը հա-
8 մարձակի մեռնելու ։) Սակայն Աս-
տուած իր սէրը որ մեր վրայ ունէր՝
յայտնեց , որ երբ դեռ մեղաւոր
9 էինք , Քրիստոս մեզի համար մե-
ռաւ . Ուրեմն հիմա որ իր արիւնո-
վը արդարացանք , որչափ աւելի
իրմով պիտի ազատինք բարկութե-
10 նէն ։ Վասն զի թէ որ թշնամի
եղած ատեննիս Աստուծոյ հետ
հաշտուեցանք իր Որդւոյն մահովը ,
որչափ աւելի մեր հաշտուած ատենը
11 պիտի ապրինք անոր կեանքովը ։ Եւ
ոչ միայն այս , հապա Աստուծով
ալ կը պարծենանք մեր Տէրոջը Յի-
սուս Քրիստոսին ձեռքովը , որով
հիմա հաշտութիւնը ընդունեցինք ։
12 Վասն զի ինչպէս որ մէկ մարդէ
մը մեղքը աշխարհք մտաւ , և ան
մեղքէն մահը , և այնպէս ամէն
մարդոց վրայ տարածուեցաւ մա-
հը , քանզի ամէնքը մեղանչեցին ։
13 (Վասն զի մինչև օրէնքին ատենը
աշխարհի մէջ մեղք կար . բայց
մեղք չսեպուիր՝ ուր որ օրէնք չը-
14 կայ ։ Սակայն մահը Ադամէն մին-
չև Մովսէսը թագաւորեց , նաև Ա-
դամին յանցանքին նման չմեղան-
չողներուն վրայ ալ , որ ան օրինակ
էր անոր՝ որ ետքէն պիտի գար ։
15 Բայց չէ թէ ինչպէս յանցանքը՝
անանկ ալ շնորհքն է . ինչու որ
եթէ մէկուն յանցանքովը շատերը
մեռան , ալ որչափ աւելի Աստուծոյ
շնորհքը՝ և ան պարգևը որ Յիսուս
Քրիստոս մէկ մարդուն շնորհքովն
16 է , շատերուն վրայ աւելցաւ ։ Եւ
չէ թէ այս պարգևը անանկ է՝ ինչ-
պէս մէկէ մը որ մեղանչեց . ինչու
որ դատաստանը մէկ մեղքէն դատա-
պարտութեան մէջ ինկաւ . բայց շը-
նորհքը շատ մեղքերէն արդարու-
17 թեան տարաւ ։ Վասն զի թէ որ
մէկ մարդուն մեղքովը մահը թա-
գաւորեց ան մէկովը , որչափ աւելի
անոնք որ շնորհքին՝ ու արդարու-
թեան պարգևին առատութիւնը
կ'առնեն , կենաց մէջ պիտի թա-
գաւորեն՝ մէկ Յիսուս Քրիստոսին
18 ձեռքովը ։) Ուրեմն ինչպէս որ
մէկուն յանցանքովը բոլոր մարդոց
դատապարտութեան մէջ եղաւ ,
անանկ ալ մէկուն արդարութիւնովը
բոլոր մարդոց կենաց արդարու-
19 թեան շնորհք եղաւ . Վասն զի
ինչպէս որ մէկ մարդուն անհնա-
զանդութիւնովը շատերը մեղաւոր
եղան , անանկ ալ մէկուն հնազան-
դութիւնովը շատերը արդար պի-
20 տի ըլլան ։ Սակայն օրէնքը
մէջտեղը ինկաւ՝ որ յանցանքը
շատնայ . բայց ուր որ աւելի
եղաւ մեղքը , ալ աւելի եղաւ շը-
21 նորհքը . Որ ինչպէս մեղքը թա-
գաւորեց մահուամբ , անանկ ալ
շնորհքը թագաւորէ արդարու-
թեամբ մինչև յաւիտենական
կեանքը մեր Տէրոջը Յիսուս Քրիս-
տոսի ձեռքովը ։

## ԳԼ . Զ

1 Պէտք չէ մեղքի մէջ մնալ , 2 քանի որ մեռած ենք մեղքին , 3 ինչպէս որ մկրտութիւնը կը ցուցընէ . 12 ուստի ալ մեղքը թող չթագաւորէ՝ մեր վրայ . 18 վասն զի մենք մեր մարմինները պատրաստեցինք արդարութեան ծառաներ ըլլալու , 23 և վասն զի մեղաց վարձքը մահ է ։

Յամի Տեառն 60

Սաղ . ԾԺԵ . 3 ։ Ղուկ . Ա . 37 ։ 45 ։ Եբր . ԺԱ . 19 ։
Գղ . ԺԵ . 4 ։ Ա Կոր . Ժ . 6 ։ 11 ։
Գործ . Բ . 24 ։ ԺԴ . 30 ։
Ես . ԾԳ . 5 ։ 6 ։ Գղ . Գ . 25 ։ Ե . 6 ։ Ը . 32 ։ Բ Կոր . Ե . 21 ։ Գաղ . Ա . 4 ։ Ա Պետ . Բ . 24 ։ Գ . 18 ։ Եբր . Թ . 28 ։
Ա Կոր . ԺԵ . 17 ։ Ա Պետ . Ա . 21 ։

Ես . ԼԲ . 17 ։ Յովհ . ԺԶ . 33 ։ Գղ . Գ . 28 ։ 30 ։
Եփես . Բ . 14 ։ Կող . Ա . 20 ։
Յովհ . Ժ . 9 ։ ԺԴ . 6 ։ Եփես . Բ . 18 ։ Գ . 12 ։ Եբր . Ժ . 19 ։
Ա Կոր . ԺԵ . 1 ։
Եբր . Գ . 6 ։
Մատ . Ե . 11 ։ 12 ։ Գործ . Ե . 41 ։ Բ Կոր . ԺԲ . 10 ։ Փիլ . Բ . 17 ։ Յակ . Ա . 2 ։ 12 ։ Ա Պետ . Դ . 14 ։
Յակ . Ա . 3 ։
Յակ . Ա . 12 ։
Փիլ . Ա . 20 ։
Բ Կոր . Ա . 22 ։ Գաղ . Դ . 6 ։ Եփես . Ա . 13 ։ 14 ։
Համ Տ ։ Գղ . Դ . 25 ։
Յովհ . ԺԵ . 13 ։ Ա Պետ . Գ . 18 ։ Ա Յովհ . Գ . 16 ։ Դ . 9 ։ 10 ։
Գղ . Գ . 25 ։ Եփես . Բ . 13 ։ Եբր . Թ . 14 ։ Ա Յովհ . Ա . 7 ։ Ա Թես . Ա . 10 ։ Գղ . Բ . 32 ։ Բ Կոր . Ե . 18 ։ 19 ։ Եփես . Բ . 16 ։ Կող . Ա . 20 ։ 21 ։ Յովհ . Ե . 26 ։ ԺԴ . 19 ։ Բ Կոր . Դ . 10 ։ 11 ։

Յամի Տեառն 60

Գղ . Բ . 17 ։ Գ . 29 ։ 30 ։ Գաղ . Դ . 9 ։
Ծնն . Գ . 6 ։ Ա Կոր . ԺԵ . 21 ։
Ծնն . Բ . 17 ։ Գղ . Զ . 23 ։ Ա Կոր . ԺԵ . 21 ։
Կամ որով ։
Գղ . Դ . 15 ։ Ա Յովհ . Գ . 4 ։
Ա Կոր . ԺԵ . 21 ։ 22 ։ 45 ։

Ես . ԾԳ . 11 ։ Մատ . Ի . 28 ։ Իղ . 28 ։

Յովհ . ԺԲ . 32 ։ Եբր . Բ . 9 ։

Յովհ . ԺԵ . 22 ։ Գղ . Դ . 20 ։ Դ . 15 ։ Է . Տ ։ Գաղ . Գ . 19 ։ 23 ։ Ղուկ . Է . 47 ։ Ա Տիմ . Ա . 14 ։

Յամի Տեառն
60

ա Գլ. գ. 8 ։ Հմր 15 ։
բ Հմր 11 ։ Գլ. է. 4 ։ Գաղ. բ. 19 ։ զ. 14 ։
գ Կող. գ. 3 ։ ա Պետ. բ. 24 ։
դ ա Կոր. ժե. 29 ։
ե Կող. բ. 12 ։
զ Յօհ. բ. 11 ։ ժա. 40 ։
է Գլ. ը. 11 ։ ա Կոր. զ. 14 ։ բ Կոր. ժգ. 4 ։
ը Գաղ. զ. 15 ։ Եփե. դ. 22. 23. 24 ։ Կող. գ. 10 ։
թ Փիլ. գ. 10. 11 ։
ժ Գաղ. բ. 20 ։ ե. 24 ։ զ. 14 ։ Եփե. դ. 22 ։ Կող. գ. 5. 9 ։
ժա Կող. բ. 11 ։
ժբ ա Պետ. դ. 1 ։
ժգ բ Տիմ. բ. 11 ։
ժդ Յայտ. ա. 18 ։
ժե Եբր. թ. 27. 28 ։
ժզ Ղուկ. ի. 38 ։
ժէ Հմր 2 ։
ժը Գաղ. բ. 19 ։
ժթ Սաղ. ժթ. 13 ։ ճժթ. 133 ։
ի Գլ. է. 5 ։ Կող. գ. 5 ։ Յակ. դ. 1 ։
իա Գլ. ժբ. 1 ։ ա Պետ. բ. 24 ։ դ. 2 ։
իբ Գլ. է. 4. 6 ։ ը. 2 ։ Գաղ. ե. 8 ։
իգ ա Կոր. թ. 21 ։
իդ Մատ. զ. 24 ։ Յօհ. ը. 34 ։ բ Պետ. բ. 19 ։
իե բ Տիմ. ա. 13 ։
իզ Յօհ. ը. 32 ։ ա Կոր. է. 22 ։ Գաղ. ե. 1 ։ ա Պետ. բ. 16 ։

1 Ալ հիմա ի՞նչ պիտի ըսենք . մեղ-
քերու մէջ մնա՞նք արդեօք , որ
2 շնորհքը շատնայ ։ Քաւ լիցի ։
Մենք որ մեղքին մեռանք , ի՞նչպէս
3 դեռ անոր մէջը կենանք ։ Չէ՞ք
գիտեր , թէ մենք որ Քրիստոս
Յիսուսով մկրտուեցանք , անոր
4 մահուանը մկրտուեցանք ։ Անոր
հետ թաղուեցանք մկրտութիւնով
մահուան համար , որ ինչպէս Քը-
րիստոս Հօրը փառքովը յարու-
թիւն առաւ մեռելներէն , անանկ
ալ մենք կենաց նորոգութեան մէջ
5 պտըտինք ։ Ինչու որ եթէ մենք
տնկակից եղանք անոր մահուանը
նմանութիւնովը , նաեւ անոր յարու-
թեանը նմանութիւնովն ալ կցորդ
6 պիտի ըլլանք ։ Աս գիտնանք՝ որ
մեր հին մարդը անոր հետը խա-
չուեցաւ , որ մեղաց մարմինը փը-
ճանայ , որ ասկէ ետեւ մեղքի չը-
7 ծառայենք ։ Վասն զի ան որ
մեռած է՝ մեղքէն արդարա-
8 ցած է ։ Արդ՝ թէ որ մենք Քրիս-
տոսի հետ մեռանք , կը հաւատանք
որ անոր հետը պիտի ապրինք ալ ։
9 Քանզի գիտենք որ Քրիստոս մե-
ռելներէն յարութիւն առած ըլլա-
լով՝ նորէն չմեռնիր , ալ մահը
անոր վրայ իշխանութիւն չունի ։
10 Վասն զի քանի որ մեռաւ՝ մեղքին
մեռաւ մէկ անգամ , և որ կենդանի
11 է՝ Աստուծոյ կենդանի է ։ Ա-
սանկ ալ դուք ձեր անձերը մեղքին
մեռած սեպեցէք , բայց Աստուծոյ
կենդանի՝ մեր Տէրոջը Քրիստոս
12 Յիսուսին ձեռքովը ։ Ուստի ալ
մեղքը չթագաւորէ՝ ձեր մահկանա-
ցու մարմինին վրայ , որ անոր ցան-
13 կութիւններուն հնազանդիք ։ Ու
ձեր անդամները անիրաւութեան
գործիք ըլլալու մի՛ ընծայէք մեղ-
քին , հապա ձեր անձերը Աս-
տուծոյ ընծայեցէք՝ որպէս թէ մե-
ռելներէն ողջնցած . և ձեր անդամ-
ները արդարութեան գործիքներ՝
14 Աստուծոյ ։ Քանզի մեղքը վրա-
նիդ պիտի չիշխէ . ինչու որ օրէնքի
տակ չէք , հապա շնորհաց տակ ։
15 Ուրեմն ի՞նչ . մե՞ղք գործենք՝
որ օրէնքի տակ չենք , հապա շը-
16 նորհքի տակ . քաւ լիցի ։ Չէ՞ք
գիտեր՝ թէ որուն որ անձերնիդ
ծառայ կ՚ընծայէք հնազանդելու ,
ծառայ էք անոր՝ որուն որ կը հնա-
զանդիք , թէ մեղքի՝ որ մահուան
կը տանի , և թէ հնազանդելու՝ որ
17 արդարութեան ։ Բայց գոհու-
թիւն Աստուծոյ , որ թէեւ դուք
մեղաց ծառայ էիք , սակայն
սրտանց հնազանդեցաք ան վարդա-
պետութեան գաղափարին՝ որ ձեզի
18 յանձնուեցաւ ։ Ուստի դուք մեղ-
քէն ազատ ըլլալով՝ արդարութեան
19 ծառայ եղաք . ( Մարդու սովո-
րութեան պէս կ՚ըսեմ՝ ձեր մար-
մինին տկարութեանը համար . )
քանզի ինչպէս որ ձեր անդամները
անօրէնութեան համար ընծայեցիք՝
պղծութեան և անօրէնութեան
ծառաներ ըլլալու , անանկ ալ հիմա
ձեր անդամները սրբութեան համար
ընծայեցէք՝ արդարութեան ծա-
20 ռաներ ըլլալու ։ Վասն զի երբոր
դուք մեղաց ծառաներ էիք , ար-
21 դարութենէն ազատ էիք ։ Ու-
րեմն ան ժամանակը ի՞նչ պտուղ
ունէիք ան բաներէն՝ որոնցմով հի-
մա կ՚ամչնաք . ինչու որ անոնց
22 վերջը մահ է ։ Բայց հիմա մեղ-
քէն ազատուած՝ և Աստուծոյ ծա-
ռաներ եղած՝ ձեր պտուղը ունիք
սրբութիւնով , ու վերջը յաւի-
23 տենական կեանք ։ Քանզի մե-
ղաց վարձքը մահ է . բայց Աս-
տուծոյ ձրի պարգեւը յաւիտենա-
կան կեանք՝ մեր Տէրոջը Յիսուս
Քրիստոսի ձեռքովը ։

Յամի Տեառն
60

իէ Յօհ. ը. 34 ։
իը Գլ. է. 5 ։
իթ Գլ. ա. 32 ։
լ Յօհ. ը. 32 ։
լա Ծն. բ. 17 ։ Գլ. ե. 12 ։ Յակ. ա. 15 ։
լբ Գլ. բ. 7 ։ ե. 17. 21 ։ ա Պետ. ա. 4 ։

## ԳԼ. Է

1 Օրէնքը մարդուն վրայ կ՚իշխէ՝ քանի որ անի-
կայ ողջ է . 4 սակայն մենք մեռանք օրէնքին .
7 այսու ամենայնիւ օրէնքը մեղք չէ , 12 հա-
պա սուրբ՝ արդար և բարի է ։ 16 Պօղոս կը
վկայէ ասանկ ըլլալը , բայց կը ցաւի որ ինքը
կարող չէ զանիկայ պահելու ։

ա ա Կոր. է. 39 ։
բ Մատ. ե. 32 ։
գ Գլ. ը. 2 ։ Գաղ. բ. 19 ։ ե. 18 ։ Եփե. բ. 15 ։ Կող. բ. 14 ։
դ Գաղ. ե. 22 ։
ե Գլ. զ. 13 ։
զ Գլ. գ. 21 ։ Գաղ. ե. 19 ։ Յակ. ա. 15 ։
է Գլ. բ. 29 ։ բ Կոր. գ. 6 ։

1 Միթէ չէ՞ք գիտեր եղբայրներ ,
(քանզի ես օրէնքը գիտցողնե-
րուն կը խօսիմ , ) որ օրէնքը մար-
դուս վրայ կ՚իշխէ՝ որչափ ժամանակ
2 որ ողջ է ։ Ինչու որ էրիկ ունե-
ցող կնիկը իր ողջ էրկանը կա-
պուած է օրէնքով . բայց թէ որ
էրիկը մեռնի , արձակուած է էր-
3 կանը օրէնքէն ։ Ուրեմն քանի որ
էրիկը ողջ է , շուն պիտի ըսուի՝ թէ
որ ուրիշ էրկան մը ըլլայ . բայց թէ
որ էրիկը մեռնի , ան օրէնքէն ա-
զատ կ՚ըլլայ , անանկ որ շնացող
չըլլար , թէ որ ուրիշ էրկան մը
4 ըլլայ ։ Ուստի դուք ալ իմ եղ-
բայրներս՝ Քրիստոսի մարմինովը
օրէնքին մեռաք , որ ուրիշի մը ըլ-
լաք , անոր՝ որ մեռելներէն յարու-
թիւն առեր է , որ Աստուծոյ
5 պտուղ բերող ըլլանք ։ Քանզի
քանի որ մենք մարմնով էինք՝ մե-
ղաց կիրքերը որ օրէնքով կ՚ըլլա-
յին , մեր անդամներուն մէջը կը
ներգործէին , որ մենք մահուան
6 պտուղ բերենք ։ Բայց հիմա ան
օրէնքէն արձակուեցանք . ինչու որ
մեռանք անոր՝ որով բռնուած
էինք , որ մենք ծառայենք հոգիին
նորոգութեամբը , և չէ թէ գրոյն
հնութեամբը ։
7 Ուրեմն ի՞նչ ըսենք . օրէնքը

Յամի Տեառն
60

ըԳղ. դ. 20։
բԵղ. ի. 17։ ըՕր. ե. 21։ Գոր. ի. 33։ Գղ. ժզ. 9։
ծԳղ. դ. 15։ ե. 20։
իաԿոր. ժե. 56։
ւՂկ. ժբ. 5։ Եղեկ. ի. 11, 13, 21։ բԿոր. դ. 7։
խՍաղ. ժթ. 8։ ճժթ. 38, 137։ աՏիմ. ա. 8։
ծգ Թագ. իա. 20, 25։ դ Թագ. ժէ. 17։
կԳաղ. ե. 17։
հԾն. զ. 5։ ը. 21։
յբԿոր. դ. 16։ Եփե. դ. 16։ Կող. գ. 9. 10։
ղՍաղ. ա. 2։
ճԳաղ. ե. 17։
մԳղ. զ. 13, 19։
յաԿոր. ժե. 57։

մե՞ղք է. քաւ լիցի. ըբայց ես մեղ-
քը չէի ճանչնար, եթէ ոչ օրէն-
քով. ինչպէս ցանկութիւնն ալ
չէի գիտեր, թէ որ օրէնքը ըսած
8 չըլլար, բՄի ցանկար։ ծԲայց մեղ-
քը պատուիրանքէն առիթ առնե-
լով՝ իմ մէջս բոլոր ցանկութիւն-
ները գոյացուց. էինչու որ առանց
9 օրէնքի մեղքը մեռած է։ Ես ալ
առանց օրէնքի ատեն մը կենդանի
էի. բայց երբոր պատուիրանքը
վրայ հասաւ, մեղքը ողջնցաւ,
10 Եւ ես մեռայ. ու ան պատուիրանքը
ւոր կենաց համար էր, նոյնը ինծի
11 մահուան համար եղաւ։ Ինչու
որ մեղքը պատուիրանքէն առիթ
առնելով՝ զիս խաբեց, ու անով
12 մեռցուց։ խՈւստի օրէնքը սուրբ
է, ու պատուիրանքը սուրբ՝ և
արդար ու բարի։
13 Ուրեմն բարին ինծի մա՞հ եղաւ.
քաւ լիցի. հապա մեղքը. որպէս
զի երևնայ մեղքը որ ան բարի բա-
նով ինծի մահ գործեց, որ մեղքը
պատուիրանքով աւելի մեղաւոր
14 ըլլայ։ Վասն զի գիտենք որ օ-
րէնքը հոգևոր է, բայց ես մարմ-
նաւոր եմ՝ ծմեղքի տակ ծախուած։
15 Քանզի ինչ որ կ'ընեմ՝ չեմ ճանչ-
նար. կչէ թէ ինչ որ կ'ուզեմ՝
ան կ'ընեմ, հապա ինչ որ կ'ա-
16 տեմ՝ ան կ'ընեմ։ Բայց թէ որ
չուզածս կ'ընեմ, հաւանութիւն
կու տամ օրէնքին թէ բարի է։
17 Իսկ արդ՝ չէ թէ ես կ'ընեմ անի-
կայ, հապա մեղքը՝ որ իմ ներսի
18 դիս կը բնակի։ Քանզի գիտեմ
որ հիմ ներսիդիս՝ այսինքն իմ
մարմնիս մէջ մէկ բարի բան մը
չբնակիր. ինչու որ կամեցողու-
թիւն կայ քովս, բայց բարին 'ի
19 գործ դնելը չեմ գտներ։ Քանզի չէ
թէ բարին որ կ'ուզեմ՝ կ'ընեմ,
հապա չարը որ չեմ ուզեր՝ ան
20 կ'ընեմ։ Իսկ թէ որ չուզած բանս
կ'ընեմ, ալ չէ թէ ես կ'ընեմ ա-
նիկայ, հապա մեղքը՝ որ իմ ներսի
21 դիս բնակած է։ Ուստի ես կը
գտնեմ օրէնք մը՝ որ երբ բարին
ընելը կը կամենամ, չարը իմ քովս
22 է։ յՎասն զի ներսի մարդուն նա-
յելով՝ ղԱստուծոյ օրէնքին կը
23 հաւնիմ. ճԲայց ուրիշ օրէնք մը
կը տեսնեմ միմ անդամներուս
մէջ՝ որ իմ մտքիս օրէնքին դէմ
կը պատերազմի, և զիս գերի կ'ընէ
մեղաց օրէնքին՝ որ իմ անդամնե-
24 րուս մէջն է։ Ինչ խղճալի մարդ
եմ ես. ո՞վ զիս պիտի ազատէ աս
25 մահացու մարմինէն։ յԳոհութիւն
Աստուծոյ՝ մեր Տէրոջը Յիսուս
Քրիստոսի ձեռքովը. ուրեմն ես
ինքնս մտքով Աստուծոյ օրէնքին
կը ծառայեմ, ու մարմնով՝ մեղաց
օրէնքին։

## ԳԼ. Ը

1 Անոնք որ Քրիստոսի մէջ են, և Հոգիին ա-
ռաջնորդութեան կ'ապրին, ազատ են դատապար-
տութենէ։ 5, 13 Թէ ինչ վնաս կը բերէ
մարմինէն, 6, 14 և ինչ շահ Հոգիէն, 17 և
ինչ Աստուծոյ որդիք ըլլալէն, 19 որոնց փա-
ռաւոր ազատութիւնը՝ որ ամէն ստեղծուած-
ները մեծ փափաքով կը սպասեն անոր, 29 յա-
ռաջագոյն սահմանուած է Աստուծմէ։ 38
Ո՛վ կրնայ զատել մեզ Քրիստոսի սէրէն։

1 Իսկ արդ՝ դատապարտութիւն չը
կայ Քրիստոս Յիսուսով եղող-
ներուն՝ որոնք մարմնաւոր կերպով
2 չեն վարուիր։ Ինչու որ աՔրիստոս
Յիսուսով կենաց հոգիին բօրէնքը
զիս ազատեց գմեղաց և մահուան
3 օրէնքէն։ դՎասն զի ան որ անկա-
րելի էր օրէնքին՝ որովհետև տկար
էր մարմնով, եԱստուած իր Որդին
խրկեց մեղանչական մարմնի նմա-
նութեամբ, ու մեղքի համար, և
դատապարտեց մեղքը ան մարմնին
4 մէջ. Որ օրէնքին արդարութիւնը
կատարուի մեր մէջը, զոր մարմնա-
ւորապէս չենք քալեր՝ հապա հո-
5 գևորապէս։ էԻնչու որ մարմնաւոր
եղողները մարմնին բաները կը
մտածեն, ու հոգևոր եղողները՝ ըհո-
6 գիին բաները։ թՎասն զի մարմ-
նաւոր խորհուրդը մահ է, և հո-
գևոր խորհուրդը կեանք ու խաղա-
7 ղութիւն։ ժՔանզի մարմնաւոր
խորհուրդը Աստուծոյ դէմ թշնա-
մութիւն է. ինչու որ Աստուծոյ
օրէնքին չհնազանդիր, իմանաւանդ
8 չկրնար ալ։ Վասն զի մարմնով
եղողները չեն կրնար Աստուծոյ հա-
9 ճոյ ըլլալ։ Բայց դուք մարմնով
չէք, հապա հոգիով, լթէ որ Աս-
տուծոյ Հոգին ձեր մէջը բնակած
է. խիսկ թէ որ մէկը Քրիստոսի
Հոգին չունի, անիկայ անորը չէ։
10 Եւ թէ որ Քրիստոս ձեր մէջն է,
ալ մարմինը մեռած է մեղքի հա-
մար, ու հոգին կենդանի է արդա-
11 րութեան համար։ Իսկ թէ որ
Յիսուսը մեռելներէն ծյարուցանո-
ղին հոգին ձեր մէջը բնակած է,
կան անիկայ՝ որ Քրիստոսը մեռել-
ներէն յարուց, պիտի կենդանա-
ցընէ ձեր մահկանացու մարմիննե-
րը իր Հոգիովը որ ձեր մէջը կը
բնակի։
12 հԱպա ուրեմն եղբայրներ՝ պար-
տապան ենք, չէ թէ մարմնին՝
13 մարմնաւորապէս ապրելու. յԻնչու
որ եթէ մարմնաւորապէս ապրելու
ըլլաք, պիտի մեռնիք. բայց թէ
որ Հոգիով ղմարմնին գործքերը
14 սպաննէք, պիտի ապրիք։ ճՎասն
զի որոնք որ Աստուծոյ Հոգիովը
կ'առաջնորդուին, անոնք Աս-

Յամի Տեառն
60

աաԿոր. ժե. 45։ բԿոր. գ. 6։
բՅով. ը. 36։ Գղ. զ. 18, 22։ Գաղ. բ. 19։ ե. 1։
գԳղ. է. 24, 25։
դԳոր. ժգ. 39։ Գղ. գ. 20։ Եբր. է. 18, 19։ ժ. 1, 2, 10, 14։
եԳաղ. գ. 13։ բԿոր. ե. 21։
զՀմր 1։
էՅով. գ. 6։ աԿոր. բ. 14։
ըԳաղ. ե. 22, 25։
թԳղ. զ. 21։ Հմր 13։ Գաղ. զ. 8։
ժՅակ. դ. 4։
իաԿոր. բ. 14։
լաԿոր. գ. 16։ զ. 19։
խՅով. գ. 34։ Գաղ. դ. 6։ Փիլ. ա. 19։ աՊետ. ա. 11։
ծԳոր. բ. 24։
կԳղ. զ. 4, 5։ աԿոր. զ. 14։ բԿոր. դ. 14։ Եփե. բ. 5։
հԳղ. զ. 7, 14։
յՀմր 6։ Գաղ. զ. 8։
ղԵփե. դ. 22։ Կող. գ. 5։
ճԳաղ. ե. 18։

Յամի Տեառն 60

ժ ա Կոր . բ . 12 ։ Եբր . բ . 15 ։
յ բ Տիմ . ա . 7 ։ ա Յօհ . դ . 18 ։
ն Եա . ծզ . 5 ։ Գաղ . դ . 5 . 6 ։
շ Մար . ժդ . 36 ։
ո բ Կոր . ա . 22 ։ ե . 5 ։ Եփե . ա . 13 ։ դ . 30 ։
չ Գոր . իզ . 18 ։ Գաղ . դ . 7 ։
պ Գոր . ժդ . 21 ։ Փիլ . ա . 29 ։ բ Տիմ . բ . 11 . 12 ։
ջ բ Կոր . դ . 17 ։ ա Պետ . ա . 6 . 7 ։ դ . 13 ։
ռ բ Պետ . գ . 13 ։
ս ա Յօհ . գ . 2 ։
վ Հռ . 22 ։ Ծն . գ . 19 ։
տ Երեմ . ժբ . 11 ։
ր բ Կոր . ե . 5 ։ Եփե . ա . 14 ։
ց բ Կոր . ե . 2 . 4 ։
ւ Ղու . ի . 36 ։
փ Ղու . իա . 28 ։ Եփե . դ . 30 ։
ք բ Կոր . ե . 7 ։ Եբր . ժա . 1 ։
օ Մատ . ի . 22 ։ Յակ . դ . 3 ։
ֆ Զաք . ժբ . 10 . Եփե . զ . 18 ։
ա ա Թագ . իը . 9 ։ Սաղ . է . 9 ։ Առակ . ժէ . 3 ։ Երեմ . ժա . 20 ։ ժէ . 10 ։ ի . 12 ։ Գործ . ա . 24 ։ ա Թես . բ . 4 ։ Յայտ . բ . 23 ։
բ ա Յօհ . ե . 14 ։
գ Գլ . թ . 11 . 23 . 24 ։ բ Տիմ . ա . 9 ։
դ Ել . իդ . 12 . 17 ։ Սաղ . ա . 6 ։ Երեմ . ա . 5 ։ Մատ . է . 23 ։ Գլ . ժա . 2 ։ բ Տիմ . բ . 19 ։ ա Պետ . ա . 2 ։ Եփե . ա . 5 . 11 ։

15 տուծոյ որդիքն են ։ Ինչու որ
դուք ծառայութեան հոգին չա-
ռիք կրկին վախնալու , Հապա
որդեգրութեան հոգին առիք , որ
անով կը կանչենք Աբբա՛յ Հայր ։
16 Նոյն ինքն Հոգին վկայութիւն
կու տայ մեր հոգիին , թէ մենք
17 Աստուծոյ որդիքն ենք ։ Եւ թէ
որ որդիք , ուրեմն ժառանգներ ,
Աստուծոյ ժառանգներ՝ ու Քրիս-
տոսի ժառանգակիցներ ։ Որ եթէ
իր չարչարանացը կցորդ ըլլանք , իր
փառացն ալ հաղորդ ըլլանք ։
18 Վասն զի ես այսպէս կը դատեմ՝
որ աս ժամանակիս չարչարանքները
բան մը չեն՝ գալու փառքին քովը ,
19 որ մեզի պիտի յայտնուի ։ Ինչու
որ ստեղծուածոց եռանդուն ակըն-
կալութիւնը Աստուծոյ որդուո-
20 ցը յայտնուելուն կը սպասէ ։ Ինչ-
չու որ ունայնութեան հնազանդե-
ցան ստեղծուածները ( չէ թէ ի-
րենց կամքովը , հապա անոր համար՝
21 որ հնազանդեցուց , ) Ան յուսով՝ որ
ստեղծուածները իրենք ալ ապա-
կանութեան ծառայութենէն ա-
զատելով՝ Աստուծոյ որդուոցը փա-
ռաւոր ազատութեանը հասնին ։
22 Քանզի գիտենք որ ամէն ստեղ-
ծուածները մինչև հիմա մէկտեղ կը
հառաչեն՝ ու ծնանելու ցաւ կը
23 քաշեն ։ Եւ ոչ միայն անոնք ,
հապա մենք ալ՝ որ Հոգիին առջի
պտուղը ունինք , մենք մեզմէ մեր
անձերուն մէջ կը հառաչենք որ-
դեգրութեան՝ այսինքն մեր մար-
մնին ազատութեանը սպասե-
24 լով ։ Ինչու որ յուսով փրկուե-
ցանք ։ Բայց յոյսը որ կը տես-
նուի՝ յոյս չէ ։ վասն զի ան բանը
որ կը տեսնէ մէկը՝ ալ ինչո՞ւ պիտի
25 յուսայ ։ Հապա թէ որ չտեսած
բաներնուս կը յուսանք , ալ համ-
բերութիւնով կը սպասենք անոր ։
26 Նմանպէս ալ Հոգին օգնութեան կը
հասնի մեր տկարութիւններուն ։
Քանզի ինչ բանի համար աղօթելու
ենք ըստ արժանւոյն , չենք գիտեր ։
Բայց ինքը Հոգին բարեխօս կ'ըլ-
լայ մեզի համար անբարբառ հա-
27 ռաչանքներով ։ Եւ սիրտերը
քննողը գիտէ Հոգիին ինչ խոր-
հիլը ։ Քանզի Աստուծոյ կամքը
համեմատ բարեխօսութիւն կ'ընէ
սուրբերուն համար ։
28 Սակայն գիտենք որ ամէն բաները
բարիի գործակից կ'ըլլան անոնց՝ որ
Աստուած կը սիրեն , որոնք անոր
նախասահմանութեամբը կանչուած
29 են ։ Վասն զի անոնք որ առաջ կը
ճանչնար , առաջուց ալ սահմանեց
իր Որդւոյն պատկերին կերպարա-
նակից ըլլալու . որ անիկայ անդ-
րանիկ ըլլայ շատ եղբայրներու մէջ ։
30 Եւ որոնք որ առաջուց սահմանեց ,
Նաև կանչեց զանոնք . և որոնք որ
կանչեց , Նաև արդարացուց զա-
նոնք . և որոնք որ արդարացուց ,
31 Նաև փառաւորեց զանոնք ։ Ու-
րեմն ի՞նչ ըսենք աս բաներուս հա-
մար . Եթէ որ Աստուած մեր կողմն
է՝ ո՞վ պիտի ըլլայ մեզի հակառակ ։
32 Ան որ իր Որդւոյն չխնայեց , հա-
պա մեր ամենուն համար մատնեց
զանիկայ . ալ ի՞նչպէս անոր հետը
33 ամէն բաները մեզի չպարգևեր ։ Ո՞վ
է որ Աստուծոյ ընտրածներուն
դէմ մեղադիր ըլլայ . Աստուած
34 է որ կ'արդարացընէ . Ուրեմն ո՞վ է
որ կը դատապարտէ . Քրիստոսն է
որ մեռաւ , մանաւանդ թէ յարու-
թիւն ալ առաւ . ու Աստուծոյ
աջ կողմն է . որ նաև մեզի համար
35 բարեխօսութիւն կ'ընէ . Ուրեմն
ո՞վ պիտի զատէ մեզ Քրիստոսի
սէրէն . տառապա՞նքը , կամ նե-
ղութի՞ւնը , կամ հալածա՞նքը ,
կամ սո՞վը , կամ մերկութի՞ւնը ,
36 կամ վտա՞նգը , կամ սո՞ւրը . ( Ինչ-
պէս որ գրուած է . Ամէն օր քեզի
համար կը սպաննուինք , մորթուե-
լու ոչխարի պէս կը սեպուինք ։ )
37 Հապա աս ամէն բաներուն մէջ՝
ալ աւելի յաղթող կ'ըլլանք անով՝
38 որ մեզ սիրեց ։ Ինչու որ ես հաս-
տատ գիտեմ՝ թէ ոչ մահը , և ոչ
կեանքը , ու ոչ հրեշտակները ; և
ոչ իշխանութիւնները , ու ոչ ներ-
կայ բաները , և ոչ գալու բաները ,
39 ու ոչ զօրութիւնները , Եւ ոչ
բարձրութիւնը , ու ոչ խորուն-
կութիւնը , և ոչ մէկ ուրիշ արա-
րած մը կրնայ մեզ զատել Աստու-
ծոյ սէրէն , որ Քրիստոս Յիսուս
մեր Տէրոջմով է ։

## ԳԼ. Թ

1 Պօղոս կը յայտնէ իր տրտմութիւնը Հրէից ազգին համար ։ 7 Չէ թէ Աբրահամի բոլոր սերունդը խոստմունքի որդիք էին ։ 18 Աստուած որուն որ կ'ուզէ՝ կ'ողորմի ։ 21 Բրուտը կրնայ կաւը իր ուզածին պէս գործածել ։ 25 Հեթանոսաց կոչումը և Հրէից անարգուիլը՝ մարգարէները նախաձայնած էին ։ 32 Ի՞նչ պատճառաւ այնքան քիչ Հրէաներ ընդունեցին հաւատքին արդարութիւնը ։

1 Ստոյգը կ'ըսեմ Քրիստոսով , ու
չեմ ստեր , ( իմ խիղճս ալ
ինծի կը վկայէ Հոգւով Սրբով , )
2 Որ մեծ տրտմութիւն է ինծի , ու
3 իմ սրտիս անպակաս ցաւ ։ Քան-
զի ես ինքնս կը խնդրէի Նզովեալ ըլ-
լալ Քրիստոսէն՝ իմ մարմնոյ կող-
մանէ եղբայրներուս ու ազգական-
4 Ներուս համար , Որոնք Իսրայէ-
լացի են . որ իրենցն է որդեգրու-

Յամի Տեառն 60

շ Յօհ . ժէ . 22 ։ բ Կոր . գ . 18 ։ Փիլ . գ . 21 ։ ա Յօհ . գ . 2 ։
ե Կող . ա . 15 . 18 ։ Եբր . ա . 6 ։ Յայտ . ա . 5 ։
ը Գլ . ա . 6 ։ թ . 24 ։ Եփե . դ . 4 ։ Եբր . թ . 15 ։ ա Պետ . բ . 9 ։
ր ա Կոր . գ . 11 ։
ժ Յօհ . ժէ . 22 ։ Եփե . բ . 6 ։
ի Թուռ . ժգ . 9 ։ Սաղ . ճժը . 6 ։
լ Գլ . ե . 6 . 10 ։
խ Գլ . դ . 25 ։
ծ Եա . ծ . 8 . 9 ։ Յայտ . ժբ . 10 . 11 ։
կ Յոբ . լդ . 29 ։
հ Մար . ժզ . 19 ։ Կող . գ . 1 ։ Եբր . ա . 3 ։ ը . 1 ։ ժբ . 2 ։ ա Պետ . գ . 22 ։
ձ Եբր . է . 25 ։ թ . 24 ։ ա Յօհ . բ . 1 ։
ղ Սաղ . խդ . 22 ։ ա Կոր . ժե . 30 . 31 ։ բ Կոր . դ . 11 ։
ճ ա Կոր . ժե . 57 ։ բ Կոր . բ . 14 ։ ա Յօհ . դ . 4 ։ ե . 4 . 5 ։ Յայտ . ժբ . 11 ։
մ Եփե . ա . 21 ։ գ . 12 ։ Կող . ա . 16 ։ բ . 15 ։ ա Պետ . գ . 22 ։

ա Գլ . ա . 9 ։ բ Կոր . ա . 23 ։ ժա . 31 ։ ժբ . 19 ։ Գաղ . ա . 20 ։ Փիլ . ա . 8 ։ ա Տիմ . բ . 7 ։
բ Գլ . ժ . 1 ։
գ Ել . լբ . 32 ։
դ բ Օր . է . 6 ։
ե Ել . դ . 22 ։ բ Օր . ժդ . 1 ։ Երեմ . լա . 9 ։

Ցամ Տեառն
60

ղ Սաղ. գ. 21. գ Թագ. ը. 11. Սաղ. կգ. 2. Ծը. 61.
է Գործ. գ. 25. Եբր. ը. 8. 9. 10.
ը Սաղ. ճխէ. 19.
ը Եբր. Թ. 1.
ժ Գործ. ժգ. 32. Գղ. գ. 2. Եփե. բ. 12.
է բ Օր. ժ. 15. Գղ. ժա. 28.
ւ Ղու. գ. 23. Գղ. ա. 3.
ի Եբրմ. իդ. 6. Յօհ. ա. 1. Գործ. ի. 28. Եբր. ա. 8. ա Յօհ. ե. 20.
ծ Թու. իգ. 19. Գղ. գ. 3.
կ Յօհ. ը. 39. Գղ. բ. 28. 29. դ. 12. 16. Գաղ. դ. 16.
հ Գաղ. դ. 23.
յ Ծն. իա. 12. Եբր. ժա. 18.
ղ Գաղ. դ. 28.
ճ Ծն. ժը. 10. 14.
մ Ծն. իե. 21.
յ Գղ. դ. 17. ը. 28.
ն Ծն. իե. 23.
շ Մաղ. ա. 2. 3. Տես բ Օր. իա. 15. Առակ. ժգ. 24. Մատ. ժ. 37. Ղու. ժդ. 26. Յօհ. ժբ. 25.
ո բ Օր. լբ. 4. բ Մն. ժԹ. 7. Յոբ. ը. 3. լդ. 10. Սաղ. ղբ. 15.
չ Ել. լգ. 19.
պ Գաղ. գ. 8. 22.
ջ Ել. Թ. 16.
ռ բ Մն. ի. 6. Յոբ. Թ. 12. իդ. 13. Դան. դ. 35.
ս Եսա. իԹ. 16. խե. 9. կդ. 8.
վ Առակ. ժզ. 4. Երեմ. ժը. 6.
տ բ Տիմ. բ. 20.

Թիւնը, ղուխտը փառքը, ևա ուխտե-
րը, եւ օրինադրութիւնը, ըև
պաշտօնը, ժու խոստումնքները.
5 էիրենցն են նահապետները, ևի-
րենցմէ է՝ Քրիստոս ալ մարմնոյ
կողմանէ. Եոր ինքն է ամենուն
վրայ Աստուած օրհնեալ յաւի-
6 տեանս. ամէն ։ ժԲայց ոչ իբր թէ
Աստուծոյ խօսքը գետինը ինկած
է. էքանզի չէ՛ թէ ամէն Իսրայէլէն
7 եղողները Իսրայէլացի են. Եւ ըչէ՛
թէ Աբրահամի սերունդ ըլլալնուն
համար՝ ամէնը որդիք են. յհապա
իսահակով քեզի սերունդ պիտի կո-
8 չուի ։ Այսինքն՝ չէ՛ թէ անոնք
որ մարմնի որդիք են, Աստուծոյ
որդիք ալ են. ղհապա խոստմուն-
քի որդիքը սերունդ կը սեպուին ։
9 Ինչու որ խոստմունքին խօսքը աս
էր թէ, ճԱսատենս պիտի գամ,
ու Սառան որդի պիտի ունենայ ։
10 Եւ ոչ միայն այսքան, մհապա Ռե-
բեկայէն ալ յայտնի է՛ որ յղացաւ
մէկէ մը, այսինքն մեր Իսահակ հօր-
11 մէն. Ինչու որ տղաքը դեռ չծնած,
և դեռ մէկ աղէկ կամ գէշ բան մը
չգործած, ( որ Աստուծոյ նախա-
սահմանութիւնը հաստատ մնայ
12 ընտրութեանը պէս՝ Չէ՛ թէ գործ-
քերէն, յհապա անկէ որ կանչեց, )
13 իրեն ըսուեցաւ, նԹէ մեծը պզտի-
կին պիտի ծառայէ. ինչպէս որ
գրուած է թէ, շՅակոբը սիրեցի,
բայց Եսաւը ատեցի ։
14 Ուրեմն ի՞նչ ըսենք. ոմիթէ Աս-
տուծոյ քովը անիրաւութի՞ւն կայ.
15 քա՛ւ լիցի ։ Ինչու որ Մովսէսին
կ'ըսէ. չՈրու որ պիտի ողորմիմ՝
կ'ողորմիմ, ու որու վրայ որ պիտի
16 գթամ՝ կը գթամ ։ Ուրեմն ոչ
անկէ է որ կը կամի, ու ոչ անկէ
որ կը վազէ. հապա Աստուծմէն՝
17 որ կ'ողորմի ։ պՔանզի գիրքը Փա-
րաւոնին կ'ըսէ, ջԱսոր համար
քեզ վերցուցի, որ իմ զօրութիւնս
քեզմով ցուցընեմ, ու բոլոր երկրի
18 մէջ իմ անունս պատմուի ։ Ուս-
տի որու որ կ'ուզէ՛ կ'ողորմի, և
19 որն որ կ'ուզէ՝ կը խստացընէ ։ Ու-
րեմն ինծի պիտի ըսես թէ, Ալ
ինչո՞ւ մեղադիր կ'ըլլայ. ռվասն զի
ո՞վ անոր կամացը դէմ դրաւ ։
20 Բայց դուն ո՞վ ես մարդ՝ որ Աս-
տուծոյ պատասխան կու տաս. մի-
թէ սստեղծուածը իր Ստեղծողին
կրնա՞յ ըսել թէ, Ջիս ինչո՞ւ ա-
21 տանկ շինեցիր ։ վԲրուտը իշխա-
նութիւն չունի՞ կաւին վրայ՝ նոյն
շաղուածքէն աման շինելու, տմէկը
պատուոյ, և միւսը անարգանաց
22 համար ։ Հապա ի՞նչ ըսելիք ունիս
մէկ, թէ որ Աստուած իր բարկու-
թիւնը ցուցընել՝ ու իր զօրու-

թիւնը յայտնել ուզելով, շատ եր-
կայնմտութեամբ համբերեց ըկոր-
սուելու պատրաստուած ցբարկու-
23 թեան ամաններուն. ւԵւ կամ որ իր
փառքին մեծութիւնը յայտնի ընէ
ողորմելու ամաններուն վրայ, էո-
րոնք որ փառքի համար առաջուց
24 պատրաստեց. Այսինքն մեզ՝ որ
կանչեց, ըչէ՛ թէ միայն Հրէանե-
րէն, հապա հեթանոսներէն ալ.
25 Ինչպէս Ովսէէին մէջ ալ կ'ըսէ.
ըիմ ժողովուրդս չեղողին իմ ժողո-
վուրդս պիտի կանչեմ, ու սիրելի
26 չեղողին՝ սիրելի ։ ֆԵւ պիտի ըլ-
լայ թէ ան տեղը որ անոնց ըսուե-
ցաւ թէ՝ Դուք իմ ժողովուրդս
չէք, հոն անոնք կենդանի Աստու-
27 ծոյն որդիքը պիտի ըսուին ։ Եսայի
ալ Իսրայէլին համար կը կանչէ.
ութէև Իսրայէլի որդւոցը թիւը
ծովու աւազին պէս ըլլայ, ըմնա-
28 ցորդ մը պիտի ազատի ։ Քան-
զի Տէրը համառօտ և կարճ բան մը
կ'ընէ արդարութեամբ. ինչու որ
ըՏէրը կարճ բան մը պիտի ընէ
29 երկրի վրայ ։ Եւ ինչպէս որ Եսա-
յին առաջուց ըսաւ. ըԹէ որ զօ-
րաց Տէրը մեզի սերունդ մը թո-
ղուցած չըլլար, էմենք Սոդոմին
պէս պիտի ըլլայինք, ու Գոմորին
պիտի նմանէինք ։
30 Ուրեմն ի՞նչ ըսենք. ղԹէ հե-
թանոսները որ արդարութեան չէ-
ին հետեւեր՝ արդարութեան հա-
սան, էան արդարութեանը՝ որ
31 հաւատքէն է. ըԲայց Իսրայէլը որ
արդարութեան օրէնքին կը հե-
տեւէր, ըարդարութեան օրէնքին
32 չհասաւ ։ Ինչո՞ւ համար. վասն զի
չէ՛ թէ հաւատքէն, հապա որպէս
թէ օրինաց գործքերէն. ուզեցին արդարանալ. ժինչու որ գայթակ-
ղութեան վէմին վրայ գլորեցան.
33 Ինչպէս որ գրուած է. էԱհա Սիօ-
նի մէջ գայթակղութեան քար մը
կը դնեմ, եւ գլորելու վէմ
մը. և ամէն ո՛վ որ անոր հաւա-
տայ՝ պիտի չամչնայ ։

ԳԼ. Ժ

5 Սուրբ Գիրքը կը ցուցընէ օրէնքէն եղած ար-
դարութեանը և հաւատքէն եղած արդարու-
թեանը մէջտեղի տարբերութիւնը. 11 կը
հաստատէ թէ ամէնն ալ՝ Հրէայ և հեթանոս՝
երբոր հաւատան, պիտի չամչնան, 18 և թէ
հեթանոսները պիտի ընդունին Աստուծոյ
խօսքը՝ ու հաւատան ։ 19 Իսրայէլը աս բա-
ներուն անտեղեակ չէր ։

1 Եղբայրներ՝ իմ սրտիս փափաքը
ու աղօթքը առ Աստուած *ա-
2 նոնց փրկուելուն համար է ։ Ինչու
որ ես կը վկայեմ անոնց համար,
ըթէ Աստուծոյ նախանձաւորու-
թիւնը ունին. բայց ոչ թէ գի-
3 տութեամբ ։ ըՎասն զի անոնք

Ցամ Տեառն
60

ը ա Պետ. բ. 8. Յուդ. 4.
ց ա Թես. ե. 9.
ւ Գղ. բ. 4. Եփե. ա. 7. Կող. ա. 27.
է Գղ. ը. 28. 29. 30.
ը Գղ. գ. 29.
ը Ովս. բ. 23. ա Պետ. բ. 10.
ֆ Ովս. ա. 10.
ո Եսա. ժ. 22. 23.
ը Գղ. ժա. 5.
է Եսա. իը. 21.
ը Եսա. ա. 9. Ողբ. գ. 22.
է Եսա. ժգ. 19. Երեմ. ծ. 40.
ղ Գղ. դ. 11. ժ. 20.
է Գղ. ա. 17.
ը Գղ. ժ. 2. ժա. 7.
ը Գաղ. ե. 4.
ժ Ղու. բ. 34. ա Կոր. ա. 23.
է Սաղ. ճժը. 22. Եսա. ը. 14. իը. 16. Մատ. իա. 42. ա Պետ. բ. 6. 7. 8.
ւ Գղ. ժ. 11.

* Ոմանք՝ Իսրայէլին
ը Գործ. իա. 20. իբ. 3. Գաղ. ա. 14. դ. 17. Տես Գղ. Թ. 31.
ը Գղ. ա. 17. Թ. 30.

Աստուծոյ արդարութիւնը չգիտ-
նալով , ու իրենց արդարութիւ-
նը հաստատել ուզելով , Աստու-
ծոյ արդարութեանը չհնազանդե-
4 ցան ։ դ Քանզի օրէնքին վախճա-
նը Քրիստոս է՝ ամէն հաւատա-
ցեալին արդարութեան համար ։
5 Ինչու որ Մովսէս օրէնքէն եղած
արդարութիւնը կը ստորագրէ թէ ,
ե Զանոնք կատարող մարդը ա-
6 նոնցմով պիտի ապրի ։ Բայց հա-
ւատքէն եղած արդարութիւնը ա-
սանկ կ՚ըսէ . զ Մի՛ ըսեր քու սըր-
տիդ մէջը , Ո՞վ պիտի ելլէ եր-
կինքը , (այսինքն՝ Քրիստոսը իջե-
7 ցընելու .) Կամ թէ՝ Ո՞վ պիտի
իջնէ անդունդը , (այսինքն Քրիս-
8 տոսը մեռելներէն հանելու ։) Հա-
պա ի՞նչ կ՚ըսէ . է Խօսքը մօտ է ,
քու բերնիդ մէջը , և քու սրտիդ
մէջն է , այսինքն՝ հաւատքին խօս-
9 քը՝ որ մենք կը քարոզենք ։ Ինչու
որ ը եթէ քու բերնովդ Յիսուսը Տէր
խոստովանիս , ու քու սրտիդ մէջը
հաւատաս թէ Աստուած անիկայ
մեռելներէն յարուց , պիտի փըր-
10 կուիս . (Վասն զի սրտով կը հա-
ւատայ մէկը արդարանալու , ու
բերնով կը խոստովանի փրկուե-
11 լու ։) Քանզի գիրքը կ՚ըսէ . թ Ա-
մէն ով որ անոր հաւատայ՝ պիտի
12 չամչնայ ։ Ինչու որ ժ խտրութիւն
չկայ Հրէային ու Յոյնին մէջտեղը .
ի վասն զի ամէնուն Տէրը նոյնն է ,
լ առատ ամէնուն՝ որ իրեն կը կան-
13 չեն ։ Քանզի ո՛վ որ խ Տէրոջը ա-
նունը ծ կանչէ՝ պիտի փրկուի ։
14 Ուրեմն ի՞նչպէս պիտի կանչեն
անոր՝ որուն որ չհաւատացին . կամ
ի՞նչպէս պիտի հաւատան անոր՝ ո-
րուն վրայով չլսեցին . կ կամ ինտո՞ր
պիտի լսեն՝ առանց մէկու մը քա-
15 րոզելուն . Կամ ի՞նչպէս պիտի
քարոզեն՝ թէ որ չղրկուին . ինչ-
պէս որ գրուած է . հ Ինտո՞ր գեղե-
ցիկ են խաղաղութիւն աւետարա-
նողներուն՝ ու բարի բաներու աւե-
16 տիս տուողներուն ոտքերը ։ ձ Բայց
ամէնը հնազանդ չեղան աւետարա-
նին . քանզի Եսային կ՚ըսէ . ղ Տէ՛ր՝
ո՞վ հաւատաց մեր տուած լուրին ։
17 Ուրեմն հաւատքը լսելէն է , ու
18 լսելը Աստուծոյ խօսքէն ։ Բայց
կ՚ըսեմ . Միթէ չլսեցի՞ն . ճ Մա-
նաւանդ Բոլոր երկիրը ելաւ անոնց
ձայնը , մ ու անոնց խօսքը մինչև
19 աշխարհի ծայրերը ։ Բայց կ՚ը-
սեմ . Միթէ Իսրայէլը չգիտցա՞ւ .
առաջ Մովսէս կ՚ըսէ . յ Ես ձեզ
նախանձի պիտի գրգռեմ անպիտան
ժողովուրդով մը , ն ու անմիտ ազ-
գով մը ձեզ պիտի բարկացընեմ ։
20 Բայց Եսային կը համարձակի , ու
կ՚ըսէ , շ Ես անոնցմէ գտնուեցայ՝ որ
զիս չէին փնտռեր , յայտնի եղայ
անոնց՝ որ զիս չէին հարցըներ ։
21 Սակայն Իսրայէլին վրայով կ՚ըսէ .
ո Բոլոր օրը իմ ձեռքերս երկընցուցի
անհնազանդ ու հակառակող ժողո-
վուրդի մը ։

## ԳԼ . ԺԱ

1 Առաքեալը կը յայտնէ թէ Աստուած բոլոր Իսրայէլը մերժած չէր , 7 և թէ ոմանք ընտրուած էին , թէև ուրիշները խստացած էին ։ 16 Անոնց դարձի գալուն յոյս կայ ։ 18 Կը ցուցընէ թէ հեթանոսները պիտի չկրնան պարծենալ անոնց դէմ . 26 վասն զի անոնց փրկուելուն համար խոստմունք մը եղած է ։ 33 Ո՛րչափ անքննելի են Աստուծոյ դատաստանները ։

1 Ուրեմն կ՚ըսեմ , ա Միթէ Աստուած
իր ժողովուրդը մերժե՞ց . քաւ
լիցի . բ Ինչու որ ես ալ Իսրայէլացի
եմ , Աբրահամի սերունդէն՝ Բենիա-
2 մինի ցեղէն ։ Չմերժեց Աստուած
իր ժողովուրդը՝ գ զոր որ ինքը առա-
ջուց ճանչցաւ . Միթէ չէ՞ք գիտեր
Եղիային պատմութեանը մէջ՝ գիրքը
ի՞նչ կ՚ըսէ . ինտո՞ր անիկայ Իս-
րայէլին համար գանգատ կ՚ընէ Աս-
3 տուծոյ , ըսելով . դ Տէ՛ր՝ քու մարգա-
րէներդ մեռցուցին , ու քու սե-
ղաններդ փլցուցին . ու մինակ ես
մնացեր եմ , և իմ անձս կը փընտ-
4 ռեն ։ Բայց ի՞նչ կ՚ըսէ անոր՝
աստուածային պատասխանը . ե Ինք-
ծի թողուցի՛ եօթը հազար
մարդիկ , որոնք Բահաղին ծնրադ-
5 րութիւն չըրին ։ զ Նմանապէս ալ աս
ատենս շնորհքին ընտրութեանը
6 համեմատ մնացորդ մը կայ . է Եւ
թէ որ շնորհքով , ուրեմն ալ գործ-
քերէն չէ . ապա թէ ոչ՝ շնորհքը
ալ շնորհք չըլլար . * իսկ թէ որ
գործքերէն է , ալ շնորհք չէ . ապա
թէ ոչ՝ գործը ալ գործ չըլլար ” ։
7 Ուրեմն ի՞նչ . ը Իսրայէլը չհասաւ
ան բանին որ կը փնտռէր . բայց
ընտրուածները հասան , ու մնա-
8 ցածները կուրցան . Ինչպէս որ
գրուած է . թ Աստուած անոնց թըմ-
րութեան ոգի տուաւ . ժ աչքեր՝ ո-
րոնցմով պիտի չտեսնեն , ու ա-
կանջներ՝ որոնցմով պիտի չլսեն ,
9 մինչև աս օրուան օրս ։ Եւ Դաւիթ
կ՚ըսէ . ի Անոնց սեղանը իրենց որո-
գայթ ու որս և գայթակղութիւն
10 ու հատուցում ըլլայ . լ Անոնց աչ-
քերը մթանան՝ որ չտեսնեն , ու
անոնց կռնակը միշտ վար ծռէ ։
11 Ուրեմն կ՚ըսեմ . Միթէ անո՞ր
համար անոնք յանցանք ըրին , որ
կործանին . քաւ լիցի . խ Հապա իրենց
յանցանքովը հեթանոսաց փրկու-
թիւն եղաւ , որ զիրենք նախանձի
12 գրգռէ ։ Ուստի թէ որ անոնց
յանցանքը աշխարհի մեծութիւն

Յամի Տեառն 60

գ Փիլ . գ . 9 ։
դ Մատ . ե . 17 ։ Գաղ . գ . 24 ։
ե Ղև . ժը . 5 ։ Նեեմ . թ . 29 ։ Եզեկ . ի . 11 . 13 . 21 ։ Գաղ . գ . 12 ։
զ Բ Օր . լ . 12 . 13 ։
է Բ Օր . լ . 14 ։
ը Մատ . ժ . 32 ։ Ղուկ . ժբ . 8 ։ Գոր . ը . 37 ։
թ Ես . իը . 16 ։ խթ . 23 ։ Երեմ . ժէ . 7 ։ Գլ . թ . 33 ։
ժ Գլ . գ . 22 ։ Գոր . ժե . 9 ։ Գաղ . գ . 28 ։
ի Գոր . ժ . 36 ։ Գլ . գ . 29 ։ Ա Տիմ . բ . 5 ։
լ Եփե . ա . 7 ։ բ . 4 . 7 ։
խ Գոր . թ . 14 ։
ծ Յովէլ . բ . 32 ։ Գոր . բ . 21 ։
կ Տիտ . ա . 3 ։
հ Ես . ծբ . 7 ։ Նաւ . ա . 15 ։
ձ Գլ . գ . 3 ։ Եբր . դ . 2 ։
ղ Ես . ծգ . 1 ։ Յով . ժբ . 38 ։
ճ Սաղ . ժթ . 4 ։ Մատ . իդ . 14 ։ իը . 19 ։ Մար . ժզ . 15 ։ Կող . ա . 6 . 23 ։
մ Տես գ Թագ . ժը . 10 ։ Մատ . դ . 8 ։
յ Բ Օր . լբ . 21 ։ Գլ . ժա . 11 ։
ն Տիտ . գ . 3 ։

Յամի Տեառն 60

շ Ես . կե . 1 ։ Գլ . թ . 30 ։
ո Ես . կե . 2 ։
ա Ա Թագ . ժբ . 22 ։ Երեմ . լա . 37 ։
բ Բ Կոր . ժա . 22 ։ Փիլ . գ . 5 ։
գ Գլ . ը . 29 ։
դ Գ Թագ . ժթ . 10 . 14 ։
ե Գ Թագ . ժթ . 18 ։
զ Գլ . թ . 27 ։
է Գլ . դ . 4 . 5 ։ Գաղ . ե . 4 ։ Տես Բ Օր . թ . 4 . 5 ։
* Ոմանք չունին ։
ը Գլ . թ . 31 ։ ժ . 3 ։ Բ Կոր . գ . 14 ։
թ Ես . իթ . 10 ։
ժ Բ Օր . իթ . 4 ։ Ես . զ . 9 ։ Երեմ . ե . 21 ։ Եզեկ . ժբ . 2 ։ Մատ . ժգ . 14 ։ Յով . ժբ . 40 ։ Գոր . իը . 26 . 27 ։
ի Սաղ . կթ . 22 ։
լ Սաղ . կթ . 23 ։
խ Գոր . ժգ . 46 ։ ժը . 6 ։ իը . 18 . 21 ։ իը . 24 . 28 ։ Գլ . ժ . 19 ։

Ցամ Տեառն 60

ծ Գոր. Թ. 15 ։ ԺԳ. 2 ։ ԻԲ. 21 ։ Գլ. ԺԵ. 16 ։ Գաղ. Ա. 16 ։ Բ. 2. 7, 8, 9 ։ Եփե. Գ. 8 ։ Ա Տիմ. Բ. 7 ։ Բ Տիմ. Ա. 11 ։
ե Ա Կոր. Է. 16 ։ Թ. 22 ։ Ա Տիմ. Դ. 16 ։ Յակ. Ե. 20 ։
է Ղև. ԻԳ. 10 ։ Թուոց ԺԵ. 18, 19, 20, 21 ։
ը Երեմ. ԺԱ. 16 ։
թ Գոր. Բ. 39 ։ Եփե. Բ. 12, 13 ։
ժ Ա Կոր. Ժ. 12 ։
ի Գլ. ԺԲ. 16 ։
լ Առակ. ԻԸ. 14 ։ Ես. ԿԶ. 2 ։ Փիլ. Բ. 12 ։
խ Ա Կոր. ԺԵ. 2 ։ Եբր. Գ. 6, 14 ։
ծ Յով. ԺԵ. 2 ։
կ Բ Կոր. Գ. 16 ։
հ Գլ. ԺԲ. 16 ։
ձ Հմր 7 ։ Բ Կոր. Գ. 14 ։
ղ Ղուկ. ԻԱ. 24 ։ Յայտ. Է. 9 ։
ճ Ես. ԾԹ. 20 ։ Տես Սաղ. ԺԴ. 7 ։
մ Ես. ԻԷ. 9 ։ Երեմ. ԼԱ. 31, 32 ։ Եբր. Ը. 8 ։ Ժ. 16 ։

եղաւ, ու անոնց նուազութիւնը՝
հեթանոսներուն մեծութիւն, ալ
ո՛րչափ աւելի անոնց լրութիւնը ։
13 Բայց ձեզի կ'ըսեմ հեթանոսնե-
րուդ ։ ծ Որովհետև հեթանոսներուն
առաքեալ եմ՝ իմ պաշտօնս կը մե-
14 ծարեմ ։ Որ գուցէ իմ մարմնս
եղողները նախանձի գրգռեմ, ե ու
անոնցմէ մէկ քանիները ազատեմ-
15 նեմ ։ Վասն զի թէ որ անոնց
մերժուիլը աշխարհին հաշտութիւն
է, հապա անոնց ընդունուիլը ի՞նչ
պիտի ըլլայ, բայց եթէ՝ մեռելներէն
16 կենդանի ըլլալ ։ է Արդ՝ թէ որ
երախայրին սուրբ է, նաև զան-
գուածը. և թէ որ արմատը սուրբ
17 է, ճիւղերն ալ ։ ը Թէ որ ան
ճիւղերէն մէկ քանիները կոտրե-
ցան, թ ու դուն որ վայրենի ձիթենի
էիր՝ անոնց մէջ պատուաստեցար,
ու ձիթենիին արմատին և պարար-
18 տութեանը հաղորդ եղար, ժ ճիւ-
ղերուն դէմ մի պարծենար. հապա
թէ որ պարծենաս, չէ՛ թէ դուն
արմատը վեր բռներ ես, հապա ար-
19 մատը քեզ ։ Ուրեմն պիտի ըսես.
Ճիւղերը կոտրեցան՝ որ ես պա-
20 տուաստուիմ ։ Աղէկ, անոնք ան-
հաւատութիւնով կոտրեցան, ու
դուն հաւատքով հաստատուեցար.
ի մի հպարտանար, լ հապա վախցիր.
21 Ինչու որ եթէ Աստուած բուն ճիւ-
ղերուն չխնայեց, գուցէ քեզի ալ
22 չխնայէ ։ Ուստի տես Աստուծոյ
քաղցրութիւնը ու խստութիւնը,
կործանուածներուն վրայ խստու-
թիւնը՝ և քու վրադ՝ քաղցրութիւ-
նը, խ թէ որ ան քաղցրութեանը
մէջ կենաս. ապա թէ ոչ՝ ծ դուն
23 ալ պիտի կտրուիս ։ կ Եւ անոնք ալ՝
թէ որ իրենց անհաւատութեանը
մէջ չկենան, պիտի պատուաստուին.
ինչու որ կարող է Աստուած անոնք
24 նորէն պատուաստելու ։ Քանզի
եթէ դուն բնական եղող վայ-
րենի ձիթենիէն կտրուեցար, ու
ան բարի ձիթենիին վրայ՝ որ բնա
բնական չէր, պատուաստեցար,
ալ ո՛րչափ աւելի անոնք՝ որ բնական
ճիւղեր են, պիտի պատուաստուին ի-
25 րենց ձիթենիին վրայ ։ Վասն զի
չեմ ուզեր եղբայրներ՝ որ չգիտնաք
աս խորհուրդս, (հ որպէս զի ինք-
զինքնիդ իմաստուն չսեպէք.) ձ որ
ըստ մասին կուրութիւն եղաւ Իս-
րայէլին, ղ մինչև որ հեթանոսներուն
26 լրութիւնը մտնէ. Եւ այսպէս բո-
լոր Իսրայէլը պիտի փրկուի. ինչ-
պէս որ գրուած է. ճ Սիոնէն պիտի
գայ Փրկիչը, ու Յակոբէն ամ-
բարշտութիւնները մէկդի պիտի
27 դարձնէ. մ Եւ աս է իմ ուխտս ա-
նոնց, երբոր անոնց մեղքերը վեր-
28 ցընեմ ։ Աւետարանին նայելով՝
անոնք թշնամի են ձեր սիրոյն հա-
մար. բայց ընտրութեանը նայելով՝
յ սիրելի են իրենց հարցը սիրոյն հա-
29 մար ։ Ինչու որ Աստուծոյ պար-
գևները ու կոչումը ն առանց զղջա-
30 նալու են ։ շ Վասն զի ինչպէս որ
դուք ալ ատեն մը Աստուծոյ չէիք
հաւատար, ու հիմա ողորմութիւն
գտաք * անոնց անհաւատութեան
31 ատենը, Անանկ ալ անոնք հիմա
անհաւատ եղան ձեր ողորմութիւն
գտած ատենը՝ որ անոնք ալ ողոր-
32 մութիւն գտնեն ։ ո Ինչու որ Աս-
տուած ամէնն ալ անհաւատու-
թեան մէջ արգիլեց, որ ամենուն
ողորմի ։
33 Ո՜վ Աստուծոյ մեծութեան ու
իմաստութեան և գիտութեան խո-
րունկութիւնը. չ ինտոր անքննելի
են իր դատաստանները, պ ու ան-
34 զննելի են իր ճամբաները ։ ջ Վասն
զի ո՞վ գիտցաւ Տէրոջը միտքը.
ռ կամ ո՞վ անոր խորհրդակից եղաւ.
35 ս Կամ ո՞վ առաջուց անոր բան մը
տուաւ, որ փոխարէնը իրեն տր-
36 ուի ։ վ Ինչու որ ամէն բաները
անկէ, ու անով, և անոր համար
են. տ Իրեն փառք յաւիտեանս.
ամէն ։

## ԳԼ. ԺԲ

1 Պէտք է որ մենք Աստուծոյ ողորմութիւններէն շարժուած՝ ջանանք Աստուծոյ հաճոյ ըլլալու ։ 3 Պէտք չէ որ մէկը իր վրայ բարձր գաղափար ունենայ, 6 հապա ամէն մարդ պարտի կատարել ան պաշտօնը, որուն որ կանչուած է ։ 9 Հրամայուած է մեզի սէր ունենալ և ուրիշ շատ պարտաւորութիւններ կատարել ։ 19 Վրէժխնդրութիւնը յատկապէս արգիլուած է ։

1 ա Արդ կ'աղաչեմ ձեզի եղբայրներ՝
Աստուծոյ ողորմութեամբը,
բ որ ձեր գ մարմինները ընծայէք
դ կենդանի զոհ մը՝ սուրբ, Աստուծոյ
հաճելի, որ է ձեր բանաւոր պաշ-
2 տօնը ։ ե Եւ մի՛ կերպարանիք աս
աշխարհիս կերպարանքովը, զ հա-
պա ձեր մտքին նորոգութեամբը
նորոգուեցէք, է որ քննէք թէ
ինչ է Աստուծոյ կամքը, ան որ
բարի ու հաճելի և կատարեալ է ։
3 ը Քանզի ինծի տրուած Աստուծոյ
շնորհքովը աս կ'ըսեմ ձեր մէջը
եղող ամէն մէկուն, թ որ արժան
եղածը մտածելէն աւելի բան չը-
մտածէ. հապա զգաստ կենալ
մտածէ. ժ ինտոր որ Աստուած ա-
մէն մէկուն բաժնեց հաւատքին
4 չափը ։ Վասն զի ի ինչպէս որ մէկ
մարմինի մէջ շատ անդամներ ու-
նինք, ու ան ամէն անդամները մի

Ցամ Տեառն 60

յ Բ Օր. Է. 8 ։ Թ. 5 ։ Ժ. 15 ։
ն Թուոց ԻԳ. 19 ։
շ Եփե. Բ. 2 ։ Կող. Գ. 7 ։
* Կամ անոնց անհաւատութիւնովը, Անանկ ալ անոնք հիմա անհաւատ եղան, որ ձեր ողորմութիւնովը՝ անոնք
ո Գլ. Գ. 9 ։ Գաղ. Գ. 22 ։
չ Սաղ. ԼԶ. 6 ։
պ Յոբ. ԺԱ. 7 ։ Սաղ. ՂԲ. 5 ։
ջ Յոբ. ԺԵ. 8 ։ Ես. Խ. 13 ։ Երեմ. ԻԳ. 18 ։ Ա Կոր. Բ. 16 ։
ռ Յոբ. ԼԶ. 22 ։
ս Յոբ. ԽԱ. 11 ։
վ Ա Կոր. Ը. 6 ։ Կող. Ա. 16 ։
տ Գաղ. Ա. 5 ։ Ա Տիմ. Ա. 17 ։ Բ Տիմ. Դ. 18 ։ Եբր. ԺԳ. 21 ։ Ա Պետ. ԵԼ. 11 ։ Բ Պետ. Գ. 18 ։ Յուդ. 25 ։ Յայտ. Ա. 6 ։

ա Բ Կոր. Ժ. 1 ։
բ Ա Պետ. Բ. 5 ։
գ Սաղ. Ծ. 13, 14 ։ Գլ. Զ. 13, 16, 19 ։ Ա Կոր. Զ. 13, 20 ։
դ Եբր. Ժ. 20 ։
ե Ա Պետ. Ա. 14 ։ Ա Յով. Բ. 15 ։
զ Եփե. Ա. 18 ։ Դ. 23 ։ Կող. Ա. 21, 22 ։ Գ. 10 ։
է Եփե. Ե. 10, 17 ։ Ա Թես. Դ. 3 ։

ը Գլ. Ա. 5 ։ ԺԵ. 45 ։ Ա Կոր. Գ. 10 ։ ԺԵ. 10 ։ Գաղ. Բ. 9 ։ Եփե. Գ. 2, 7, 8 ։ թ Առակ. ԻԵ. 27 ։ Ժող. Է. 16 ։ Գլ. ԺԱ. 20 ։ ժ Ա Կոր. ԺԲ. 7, 11 ։ Եփե. Դ. 7 ։ ի Ա Կոր. ԺԲ. 12 ։ Եփե. Դ. 16 ։

Յամի Տեառն 60

5 և նոյն գործը չունին . Այսանկ ալ
մենք շատուորներս մէկ մարմին մըն
ենք Քրիստոսով , և ամէն մէկերնիս
6 իրարու անդամներ ենք ։ Ուստի
մենք զանազան պարգևներ ունենա-
լով՝ մեզի տրուած շնորհքին համեմատ որ մե-
զի տրուած է , թէ որ մարգարէու-
թիւն՝ հաւատքին չափովը գործո-
7 ծենք , թէ որ սպասաւորութիւն՝
սպասաւորութեան մէջ ըլլանք . թէ
ան որ կը սորվեցընէ՝ սորվեցընելու
8 եռանդ ըլլայ , թէ ան որ կը յորդո-
րէ՝ յորդորելու եռանդ . ան որ կը
բաշխէ՝ առատամտութեամբ թող
ընէ , ան որ վերակացու է՝ ջան-
քով , ան որ կ՚ողորմի՝ զուարթու-
9 թեամբ . Սէրը առանց կեղծաւո-
րութեան ըլլայ . չարէն զզուելով՝
10 բարիին յարելով . Եղբայրսիրու-
թեան մէջ իրարու վրայ գորովալից
եղէք . պատուելու մէջ իրարմէ
11 անցէք . Ջանքի մէջ թուլամիտ
չըլլաք . հոգիով բորբոքեցէք . Տէ-
12 րոջը ծառայեցէք . Յուսով ուրախ
եղէք , նեղութեան մէջ համբերե-
ցէք . Ստէպ աղօթքի կեցէք .
13 Սուրբերուն պիտոյիցը հաղորդե-
ցէք . Հիւրասիրութեան եռանդ
14 եղէք . Ձեզ հալածողները օրհնե-
ցէք . օրհնեցէ՛ք՝ ու մի՛ անիծէ՛ք .
15 Խնդացողներուն հետ խնդացէ՛ք ,
16 և լացողներուն հետ լացէ՛ք . Իրա-
րու վրայ մի և նոյն խորհուրդը ու-
նեցէք . ամբարտաւանութիւն մի՛
ընէք , հապա խոնարհներուն հետ
խոնարհեցէ՛ք . Ինքզինքնիդ իմաս-
17 տունի տեղ մի դնէք . Չարու-
թեան փոխարէն մէկուն չարու-
թիւն մի՛ հատուցանէք . ամէն
մարդոց առջևը բարի բաներ ընելու
18 հոգ տարէք ։ Որչափ որ կարելի է
ձեզի՝ ամէն մարդոց հետ խաղա-
19 ղութիւն ունեցէք ։ Սիրելի՛ք՝ վը-
րէժխնդրութիւն մի ընէք ձեր ան-
ձերուն համար , հապա բարկու-
թեան տեղ տուէք . ինչու որ գը-
րուած է . Վրէժխնդրութիւնը
իմս է . ես պիտի հատուցանեմ՝
20 կ՚ըսէ Տէրը ։ Ուստի թէ որ քու
թշնամիդ անօթեցեր է՝ հաց տուր
անոր , և թէ որ ծարաւ է՝ ջուր
տուր անոր . քանզի ասիկա ընելով՝ ա-
նոր գլխուն վրայ կրակի կայծեր
21 պիտի դիզես ։ Չարէն մի՛ յաղ-
թուիր , հապա բարիով յաղթէ՛
չարին ։

ԳԼ․ ԺԳ

1 Պարտինք հնազանդ ըլլալ իշխանաւորներուն , և անոնց վերաբերեալ մեր ամէն պարտաւորութիւնները կատարել ։ 8 Օրէնքին լրումը սէրն է ։ 11 Զեղխութիւն , գինովութիւն , և խաւարին գործքերը անվայել են քրիստոնեաներուն ։

1. Ամէն մարդ իր վրան եղած իշխա-
նութիւններուն թող հնազան-
դի . վասն զի չկայ իշխանութիւն
մը որ Աստուծմէ չըլլայ . և անոնք
որ կան՝ Աստուծմէ կարգուած են .
2 Ուրեմն ով որ իշխանութեան դէմ
կը կենայ , Աստուծոյ հրամանին
դէմ կը կենայ . և անոնք որ դէմ
կը կենան , անձերնուն դատապար-
3 տութիւն կ՚ընդունին ։ Վասն զի
իշխանները բարի գործքերու վախ
տալու չեն , հապա չարերու . կ՚ու-
զե՞ս չվախնալ իշխանութենէն .
բարի գործէ , ու անկէ գովութիւն
4 պիտի ընդունիս . Ինչու որ անիկայ
Աստուծոյ սպասաւորն է քեզի բա-
րիի համար . բայց թէ որ դուն չար
կը գործես . վախցի՛ր . ինչու որ
դատարկ տեղը մէջքը թուր չէ կա-
պեր . քանզի Աստուծոյ սպասա-
ւորն է . և վրէժխնդիր բարկու-
թիւն հասցընելու անոր վրայ՝ որ
5 չար կը գործէ ։ Ասոր համար
պէտք է հնազանդ ըլլալ , չէ՛ թէ
մինակ բարկութեանը համար՝ հա-
6 պա խղճմտանքի համար ալ ։ Աս
պատճառով է որ տուրք ալ կու
տաք . ինչու որ Աստուծոյ սպասա-
ւորներն են ան նոյն բանին հոգ
7 տանելու ։ Ուստի հատուցէ՛ք
պէտք եղածը ամենուն . որուն որ
տուրք տալու է՝ տուրքը , որուն
որ մաքս՝ մաքսը , որուն որ վախ՝
վախնալը , որուն որ պատիւ՝ պա-
տիւը ։
8 Բնաւ մէկուն պարտական մի՛
գտնուիք , միայն թէ մէկզմէկ սի-
րելու . Վասն զի ով որ ընկերը կը
9 սիրէ , օրէնքը կը կատարէ . Ինչ-
չու որ ան Մի՛ շնար , Մի՛ սպանա-
ներ , Մի՛ գողնար , Սուտ վը-
կայութիւն մի՛ ըներ , Մի՛ ցանկա-
ր , և ուրիշ ինչ պատուէր որ կայ՝
բոլորը աս խօսքին մէջ կը բովան-
դակուի թէ , Քու ընկերդ սիրես
10 քու անձիդ պէս ։ Սէրը ընկերին
գէշութիւն չըներ . ուրեմն օրէն-
քին լրումը սէրն է ։
11 Եւ այսպէս ըրէ՛ք՝ գիտնալով ա-
տենը , Որ հիմա ժամանակ է
մեզի քունէ արթըննալու . ինչու
որ հիմա մօտ է մեզի փրկութիւնը՝
քան թէ ան ատենը որ հաւատա-
12 ցինք ։ Գիշերը շատ անցած է , ու

Լա Կոր․ ժ․ 17։ ժբ․ 20։ 27։ Եփս․ ա․ 23։ դ․ 25
ա Կոր․ ժբ․ 4։ ա Պետ․ դ․ 10․ 11։
Հմր 3։
Գոր․ ժա․ 27։ ա Կոր․ ժբ․ 10․ 28։ ժզ․ 2։ ժգ․ 1․ 6․ 29․ 31։
Գոր․ ժգ․ 1։ Եփե․ դ․ 11։ Գաղ․ զ․ 6։ ա Տիմ․ ե․ 17։
Գոր․ ժե․ 32։ ա Կոր․ ժդ․ 3։
Մատ․ զ․ 1․ 2․ 3։ բ Կոր․ ը․ 2։
Գոր․ ի․ 28։ ա Տիմ․ ե․ 17։ Եբր․ ժգ․ 7․ 24։ ա Պետ․ ե․ 2։
բ Կոր․ թ․ 7։
ա Տիմ․ ա․ 5։ ա Պետ․ ա․ 22։
Սաղ․ լդ․ 14։ լզ․ 4։ դէ․ 10։ Ամովս․ ե․ 15։
Եբր․ ժգ․ 1։ ա Պետ․ ա․ 22։ բ․ 17։ գ․ 8։ բ Պետ․ ա․ 7։
Փիլ․ բ․ 3։ ա Պետ․ ե․ 5։
Ղու․ ժ․ 20։ Գղ․ ե․ 2։ ժե․ 13։ Փիլ․ գ․ 1։ դ․ 4։ ա Թես․ ե․ 16։ Եբր․ գ․ 6։ ա Պետ․ դ․ 13։
Ղու․ իա․ 19։ ա Տիմ․ զ․ 11։ Եբր․ ժ․ 36։ ժբ․ 1։ Յակ․ ա․ 4։ ե․ 7։ ա Պետ․ բ․ 19։ 20։
Ղու․ ժբ․ 1։ Գոր․ ր․ 42։ ժբ․ 5։ Կող․ դ․ 2։ Եփե․ զ․ 18։ ա Թես․ ա․ 17։ ա Կոր․ ժզ․ 1։ բ Կոր․ թ․ 1․ 12։ Եբր․ զ․ 10։ ժգ․ 16։ ա Յով․ գ․ 17։ ա Տիմ․ գ․ 2։ Տիտ․ ա․ 8։ Եբր․ ժգ․ 2։ ա Պետ․ դ․ 9։ Մատ․ ե․ 44։ Ղու․ զ․ 28։ իգ․ 34։ Գոր․ է․ 59։ ա Կոր․ դ․ 12։ ա Պետ․ բ․ 23։ գ․ 9։ ա Կոր․ ժբ․ 26։ բ Գլ․ ժե․ 5։ ա Կոր․ ա․ 10։ Փիլ․ բ․ 2։ գ․ 16։ ա Պետ․ գ․ 8։ Սաղ․ ճլա․ 1․ 2։ Երեմ․ իե․ 5։ Առակ․ գ․ 7։ իզ․ 12։ Ես․ ե․ 21։ Գլ․ ժա․ 25։ Առակ․ ի․ 22։ Մատ․ ե․ 39։ ա Թես․ ե․ 15։ ա Պետ․ գ․ 9։ Գլ․ ժգ․ 16։ բ Կոր․ ը․ 21։ Մար․ թ․ 49։ Գլ․ ժգ․ 19։ Եբր․ ժբ․ 14։ Ղև․ ժթ․ 18։ Առակ․ իդ․ 29։ Հմր 17։ բ Օր․ լբ․ 35։ Եբր․ ժ․ 30։ Ելից իգ․ 4․ 5։ Առակ․ իե․ 21․ 22։ Մատ․ ե․ 44։

Յամի Տեառն 60

Տիտ․ գ․ 1։ ա Պետ․ բ․ 13։
Առակ․ ը․ 15․ 16։ Դան․ բ․ 21։ դ․ 32։ Յով․ ժթ․ 11։
Տիտ․ գ․ 1։
ա Պետ․ բ․ 14։ գ․ 13։
Ժող․ ը․ 2։
ա Պետ․ բ․ 19։
Մատ․ իբ․ 21։ Մար․ ժբ․ 17։ Ղու․ ի․ 25։
Հմր 10։ Գաղ․ ե․ 14։ Կող․ գ․ 14։ ա Տիմ․ ա․ 5։ Յակ․ բ․ 8։
Ելից ի․ 13․ 14։ բ Օր․ ե․ 17։ Մատ․ ժթ․ 18։
Ղև․ ժթ․ 18։ Մատ․ իբ․ 39։ Մար․ ժբ․ 31։ Գաղ․ ե․ 14։ Յակ․ բ․ 8։
Մատ․ իբ․ 40։ Հմր 8։
ա Կոր․ ժե․ 34։ Եփե․ ե․ 14։ ա Թես․ ե․ 5․ 6։

Յամի Տեառն
60

Ել. լդ. 12։ լդ. 1։
Սաղ. խ. 8։ Երեմ. լա. 33։ Եզեկ. ժա. 19։ լզ. 26։ Եբր. ը. 10։
Յով. ժե. 5։ Գլ. բ. 16։
ա Կոր. ժե. 10։ Փիլ. բ. 13։
Երեմ. լա. 31։ Մատ. իզ. 25։ Եբր. ը. 6, 8։
ա Կոր. գ. 5։ ժե. 10։ Գլ. ե. 18։ Եփե. գ. 7։ Կող. ա. 25, 29։ ա Տիմ. ա. 11, 12։ բ Տիմ. ա. 11։
Հռով. բ. 27, 29։ է. 6։
Հռով. գ. 20։ դ. 15։ է. 9, 10, 11։ Գաղ. գ. 10։
Յով. գ. 64։ Հռով. ը. 2։
Հռով. է. 10։
Ել. լդ. 1, 29։ բ Օր. ժ. 1, 5։
Ել. լդ. 29, 30, 35։
Գաղ. գ. 5։
Հռով. ա. 17։ գ. 21։
Գլ. է. 4։ Եփե. զ. 19։
Ել. լդ. 33, 35։
Հռով. ժ. 4։ Գաղ. գ. 23։
Եսա. զ. 10։ Մատ. ժգ. 11, 14։ Յով. ժբ. 40։ Գործ. իը. 26։ Հռով. ժա. 7, 8, 25։ Գլ. դ. 4։
Ել. լդ. 34։ Հռով. ժա. 23, 26։
Եսա. իե. 7։
Հմր 6։ ա Կոր. ժե. 45։
Գլ. դ. 4, 6։ ա Տիմ. ա. 11։
ա Կոր. ժգ. 12։
Հռով. ը. 29։ ա Կոր. ժե. 49։ Կող. գ. 10։

ապաստաւորութիւնովը . չէ՛ թէ մե_
լանով գրուած , հապա կենդանի
Աստուծոյ Հոգիովը . չէ՛ թէ քա_
րեղէն տախտակներու վրայ , հա_
պա սրտին մարմնեղէն տախտակնե_
4 րուն վրայ ։ Եւ ասանկ վստահու_
թիւն ունինք մենք Աստուծոյ վրայ՝
5 Քրիստոսի ձեռքովը . Չէ՛ թէ
մենք ինքնիրեննիս բաւական ենք
բան մը խորհելու՝ որպէս թէ մեզմէ .
հապա մեր բաւականութիւնը Աս_
6 տուծմէ է . Որ մեզ բաւական ալ
ըրաւ Նոր կտակարանին պաշ_
տօնեաներ ըլլալու՝ չէ՛ թէ գիրին ,
հապա հոգիին . ինչու որ գիրը կը
սպաննէ , բայց հոգին կ՚ապրեցընէ ։
7 Իսկ թէ որ քարերու վրայ գրով
փորուած մահուան պաշտօնը փառ_
քով եղաւ , որ Իսրայէլի որդիքը
կարող չեղան Մովսէսին երեսը նայե_
լու՝ անոր երեսին փառացը համար ,
8 որ պիտի խափանուէր . Ո՞րչափ
հոգիին պաշտօնը ի՞նչպէս աւելի
9 փառքով պիտի չըլլայ ։ Ինչու որ
եթէ դատապարտութեան պաշտօնը
փառքով էր , ո՞րչափ աւելի արդա_
րութեան պաշտօնը փառքով պիտի
10 ըլլայ ։ Վասն զի ան որ փառաւոր
էր , աս մասին փառաւոր չէ՛ , գե_
րազանց փառքին պատճառովը ։
11 Քանզի եթէ ան որ պիտի խափա_
նուէր՝ փառքով էր , ո՞րչափ աւելի
ան որ կը կենայ՝ փառքով պիտի
12 ըլլայ ։ Ուստի ասանկ յոյս որ ու_
նինք , շատ համարձակութեամբ կը
13 վարուինք մեր խօսքին մէջը ։ Եւ չէ՛
թէ ինչպէս որ Մովսէս իր երեսին
վրայ ծածկոց կը ձգէր , որ Իսրա_
յէլի որդիքը չնային ան խափա_
14 նուելու բաներուն վախճանին ։ Սա_
կայն անոնց միտքերը կուրցան . ին_
չու որ մինչև ասօրուան օրս նոյն
ծածկոցը ձգուած է հին կտակարա_
նին ընթերցմունքին վրայ , ու չվեր_
նար , ( ինչու որ Քրիստոսով կը
15 խափանուի . ) Հապա մինչև այսօր
երբոր Մովսէսին գիրքը կը կարդան ,
անոնց սրտին վրայ ծածկոց մը կը
16 կենայ ։ Բայց երբոր Տէրոջը դառ_
նան , ան ատենը պիտի վերնայ ան
17 ծածկոցը . Վասն զի Տէրը Հոգին
է . և ուր որ Տէրոջը Հոգին կայ ,
18 հոն ազատութիւն կայ ։ Բայց մենք
ամէնքս բաց երեսով Տէրոջը փառ_
քը որպէս թէ հայելիի մէջ տես_
նելով , նոյն պատկերին կը նորո_
գուինք փառքէ ՚ի փառք , որպէս
թէ Տէրոջը Հոգիէն ։

## ԳԼ. Դ

1 Կը ծանուցանէ թէ ինչպէս անկեղծութեամբ և հաւատարիմ եռանդով քարոզեց աւետարանը , 7 և թէ ինչպէս աւետարանին համար իր ամէն օր կրած նեղութիւնները և հալածանքները պատճառ եղան աւելցընելու Աստուծոյ զօրութեան փառքը 12 եկեղեցիին օգուտը , 16 և իր անձին յաւիտենական փառքը ։

1 Ուստի աս պաշտօնը ունենալով ,
ինչպէս որ ողորմութիւն գը_
2 տանք , չենք ձանձրանար . Հապա
հրաժարեցանք ամօթալի ծածուկ
բաներէն , ու խորամանկութիւնով
չենք վարուիր , և խարդախութիւն
չենք ըներ Աստուծոյ խօսքին մէջ .
հապա ճշմարտութիւնը յայտ_
նելով՝ անձերնիս մարդոց ամէն
խղճմտանքին կ՚ընծայենք Աստու_
3 ծոյ առջևը ։ Իսկ թէ որ մեր աւե_
տարանը ծածկուած ալ է , կոր_
սուածներուն մէջ ծածկուած է .
4 Որոնց մէջ աս աշխարհիս աս_
տուածը անհաւատներուն միտքե_
րը կուրցուց , որ Քրիստոսի փա_
ռաց աւետարանին լոյսը անոնց
վրայ չծագէ . որ ինքն է Աստու_
5 ծոյ պատկերը ։ Ինչու որ չէ թէ
անձերնիս կը քարոզենք , հապա
Քրիստոս Յիսուս Տէրը , ու մեզ՝
ձեր ծառաները Յիսուսի համար .
6 Վասն զի Աստուած՝ որ հրաման
ըրաւ խաւարէն լոյս ծագել , ինքը
մեր սրտերուն մէջ ծագեց՝ Աստու_
ծոյ փառաց գիտութեան լոյսը տա_
լու համար Յիսուս Քրիստոսի ան_
7 ձովը ։ Արդ՝ մենք աս գանձը հո_
ղէ ամաններու մէջ ունինք , որ
զօրութեան առաւելութիւնը Աս_
տուծմէ ըլլայ , ու չէ՛ թէ մեզմէ ,
8 Ամէն կողմանէ վշտացած ենք ,
բայց նեղը ինկած չենք . կարօտեալ
9 ենք , բայց յուսահատած չենք . Հա_
լածուած ենք , բայց երեսէ ձգուած
չենք . վար ձգուած ենք , բայց
10 կորսուած չենք . Ամէն ատեն Յի_
սուսի մահը մեր մարմիններուն մէ_
ջը կը կրենք , որ Յիսուսի կեանքն
ալ մեր մարմիններուն մէջը յայտ_
11 նուի ։ Վասն զի մենք որ կենդա_
նի ենք՝ Յիսուսի համար միշտ մա_
հուան կը մատնուինք , որ Յիսուսի
կեանքն ալ մեր մահկանացու մար_
միններուն մէջը յայտնի ըլլայ ։
12 Ուստի մահը մեր մէջը կը ներգոր_
13 ծէ , և կեանքը ձեր մէջը ։ Բայց
հաւատքին նոյն հոգին ունինք ,
ինչպէս որ գրուած է . Հաւատա_
ցի , անոր համար խօսեցայ . մենք
ալ կը հաւատանք , ու անոր հա_
14 մար կը խօսինք . Ասոր գիտնալով՝
թէ ան որ Տէր Յիսուսը յարուց ,
մեզ ալ Յիսուսով պիտի յարու_
ցանէ , ու ձեզի առջևը պիտի կայ_
15 նեցընէ ձեզմով մէկտեղ . Ինչու
որ ամէն բան ձեզի համար է , որ
ան շնորհքը առատացած շատե_

Յամի Տեառն
60

Գլ. գ. 6։ ա Կոր. է. 25։ ա Տիմ. ա. 13։
Գլ. բ. 17։ ա Թես. բ. 3, 5։
Գլ. գ. 4, 7։ է. 14։
Գլ. ե. 11։
ա Կոր. ա. 18։ Գլ. բ. 15։ բ Թես. բ. 10։
Յով. ժբ. 31։ ժդ. 30։ ժզ. 11։ Եփե. զ. 12։
Եսա. զ. 10։ Յով. ժբ. 40։ Գլ. գ. 14։
Գլ. գ. 8, 9, 11, 18։ Հմր 6։
Յով. ա. 18։ ժբ. 45։ ժդ. 9։ Փիլ. բ. 6։ Կող. ա. 15։ Եբր. ա. 3։
ա Կոր. ա. 13, 23։ ժ. 33։
ա Կոր. թ. 19։ Գլ. ա. 24։
Ծն. ա. 3։
բ Պետ. ա. 19։
Հմր 4։ ա Պետ. բ. 9։
Գլ. ե. 1։
ա Կոր. բ. 5։ Գլ. ժբ. 9։
Գլ. է. 5։
Սաղ. լե. 24։
ա Կոր. ժե. 31։ Գլ. ա. 5, 9։
Գաղ. զ. 17։ Փիլ. գ. 10։ Հռով. ը. 17։ բ Տիմ. բ. 11, 12։ ա Պետ. դ. 13։
Սաղ. խդ. 22։ Հռով. ը. 36։ ա Կոր. ժե. 31, 49։ Գլ. ա. 8, 9։
Գլ. ժգ. 9։
Հռով. ա. 12։ բ Պետ. ա. 1։
Սաղ. ճժե. 10։
Հռով. ը. 11։ ա Կոր. զ. 14։
ա Կոր. գ. 22։ Գլ. ա. 6։ Կող. ա. 24։ բ Տիմ. բ. 10։
Գլ. ա. 11։ ը. 19։ թ. 11, 12։

Յամի Տեառն
60

ա Հռով. ե. 22։ Եփե. գ. 16։ Կող. գ. 10։ ա Պետ. գ. 4։
Հ Մատ. ե. 12։ Հռով. ը. 18։ ա Պետ. ա. 6։ ե. 10։
բ Հռով. ը. 24։ Գղ. ե. 7։ Եբր. ժա. 1։

գ Յոբ. դ. 19։ Գղ. դ. 7։ բ Պետ. ա. 13, 14։
բ Հռով. ը. 23։
գ Յայտ. դ. 18։ ժգ. 15։
դ ա Կոր. ժե. 53, 54։
ե Եփ. իթ. 23։ Եփե. բ. 10։
զ Հռով. ը. 23։ Գղ. ա. 22։ Եփե. ա. 14։ դ. 30։
է Հռով. ը. 24, 25։ Գղ. դ. 18։ ա Կոր. ժգ. 12։ Եբր. ժա. 1։
ը Փիլ. ա. 23։
թ Մատ. իե. 31, 32։ Հռով. ժդ. 10։
ժ Հռով. բ. 6։ Գաղ. զ. 8։ Եփե. զ. 8։ Կող. գ. 24, 25։ Յայտ. իբ. 12։
ի Յոբ. լա. 23։ Եբր. ժ. 31։ Յուդ. 23։
լ Գղ. գ. 2։

բուն գոհութիւն ընելովը աւելնայ
Աստուծոյ փառքին համար ։
16 Վասն որոյ չենք ձանձրանար .
բայց թէպէտ ա մեր դուրսի մար-
դը կ'ապականի , սակայն մեր ներ-
սի մարդը օրէ օր կը նորոգուի ։
17 Հինչու որ մեր վայրկենական թեթեւ
նեղութիւնը խիստ մեծ ու չափա-
զանց փառքի յաւիտենական ա-
ռաւելութիւն կը գործէ մեզի ։
18 բ Վասն զի մենք երեւցած բաներուն
չենք նայիր , հապա չերեւցածնե-
րուն . ինչու որ երեւցած բաները
ժամանակաւոր են , բայց չերեւցած-
ները՝ յաւիտենական ։

## ԳԼ. Ե

1 Կը ծանուցանէ թէ ինքը հաստատուն յոյս ու-
նենալով անմահ փառաց , 9 եւ սպասելով ան
փառքին եւ ընդհանուր դատաստանին . կը
ջանայ մաքուր խղճմտանք ունենալ , 12 ո՛չ
թէ անով պարծենալու համար , 14 այլ իբրեւ
Քրիստոսէն կենդանութիւն ունեցող մէկը՝
կ'աշխատի որ միայն Քրիստոսի կենդանի ըլլայ
իբրեւ նոր արարած մը , 18 ու իր հաշտութեան
պաշտօնովը ուրիշներն ալ Աստուծոյ հետ հաշ-
տեցընէ ։

1 Վասն զի գիտենք որ գ եթէ մեր
վրանի նման երկրաւոր տունը
քակուի , մէկ շինուածք մը ունինք
Աստուծմէ , անձեռագործ տուն մը՝
2 յաւիտենական՝ երկինքի մէջ ։ բ Եւ
աս երկրաւոր տանս մէջ կը հառա-
չենք , մեր երկնաւոր բնակութիւ-
3 նը հագնելու փափաքելով . Միայն
թէ գ երբոր ան հագնելու ըլլանք ,
4 մերկ չգտնուինք ։ Վասն զի մենք
որ աս վրանին տակն ենք՝ կը հառա-
չենք ծանրութիւն քաշելով . ինչու
որ չենք ուզեր վրանուս հանել ,
դ հապա անկէ ասոր վրայէն հագ-
նիլ , որ մահկանացութիւնը ընկղմի
5 կեանքէն ։ ե Բայց ան որ մեզ աս
բանիս կը պատրաստէ՝ Աստուած
է . զ որ նաեւ մեզի տուաւ Հոգիին
6 գրաւը ։ Ուստի ամէն ատեն վստա-
հութիւն ունինք , եւ գիտենք՝ թէ
որչափ որ մարմինի մէջ կը կենանք ,
7 Տէրոջմէ հեռու ենք . ( է Ինչու
որ հաւատքով կը քալենք , ու
8 չէ թէ երեւոյթով . ) Ուստի վստա-
հութիւն ունինք՝ ը եւ ալ աւելի
կ'ուզենք մարմինէն հեռանալ , ու
9 Տէրոջը քովը կենալ ։ Ասոր հա-
մար կը ջանանք ալ , որ թէ՛ կե-
նանք , եւ թէ հեռանանք , անոր
10 հաճոյ ըլլանք ։ թ Վասն զի պէտք
է որ ամէնքս ալ Քրիստոսի ատեա-
նին առջեւը ներկայանանք , ժ որ
ամէն մէկը իր մարմնովը ըրածնե-
րուն փոխարէնը առնէ ինչ որ գոր-
ծեր է , թէ՛ բարի եւ թէ չար ։
11 ի Ուստի Տէրոջը վախը գիտնալով՝
մարդոց միտքը կը համեցընենք .
լ սակայն մենք Աստուծոյ առջեւը
յայտնի ենք . եւ կը յուսամ որ ձեր
խղճմտանքին մէջն ալ յայտնի ենք ։
12 խ Չէ թէ նորէն անձերնիս ձեզի կ'ըն-
ծայենք . ծ հապա առիթ կու տանք
ձեզի՝ մեր վրայով պարծենալու . որ
բան մը ունենաք պատասխանելու ա-
նոնց՝ որ աչքի երեւցածովը կը պար-
13 ծենան , ու չէ՛ թէ սրտով ։ կ Ին-
չու որ եթէ խելքռած ենք՝ ան Աս-
տուծոյ համար է , եւ թէ որ զգաստ
14 ենք՝ ան ձեզի համար է . Ինչու որ
Քրիստոսի սէրը մեզ կը ստիպէ .
քանզի մեր դատումը աս է որ՝ հ ե-
թէ մէկը ամենուն համար մեռաւ ,
15 ուրեմն ամէնն ալ մեռած էին . Եւ
ամենուն համար մեռաւ , ձ որ կեն-
դանի եղողները՝ ալ իրենց անձե-
րուն կենդանի չըլլան , հապա անոր՝
որ իրենց համար մեռաւ ու յարու-
16 թիւն առաւ ։ ղ Ուստի ասկէ ետեւ
մենք մէկ մը մարմնով չենք գիտեր .
ու թէեւ Քրիստոսը մարմնով ճանչ-
ցանք , ճ բայց հիմա՝ ալ անանկ չենք
17 ճանչնար ։ մ Ուրեմն թէ որ մէկը
Քրիստոսի մէջ է , յ անիկայ նոր ըս-
տեղծուած մըն է . ն հիները անցան ,
18 եւ ահա ամէն բան նոր եղաւ ։ Սա-
կայն ամէն բան Աստուծմէ է , շ որ
մեզ իրեն հետ հաշտեցուց Յիսուս
Քրիստոսի ձեռքովը , ու տուաւ մե-
19 զի հաշտութեան պաշտօնը . ո Այս-
ինքն Աստուած էր , որ Քրիստո-
սով աշխարհս իրեն հետ հաշտե-
ցուց , եւ անոնց յանցանքները իրենց
չսեպեց , ու հաշտութեան խօսքը
20 մեր մէջը դրաւ ։ Ուրեմն Քրիս-
տոսի կողմանէ չ դեսպանութիւն
կ'ընենք , պ իբրեւ թէ Աստուած կը
բարեխօսէր մեզմով . կ'աղաչենք ձեզ
Քրիստոսի կողմանէ , հաշտուեցէ՛ք
21 Աստուծոյ հետ ։ ջ Վասն զի Ա-
տուած անիկայ՝ որ մեղք չէր գի-
տեր , մեզի համար մեղաւոր սեպեց .
ռ որ մենք անոր միջոցովը Աստուծոյ
արդարները ըլլանք ։

## ԳԼ. Զ

1 Առաքեալը կը ծանուցանէ որ իր անձը ընծա-
յած է իբրեւ Քրիստոսի հաւատարիմ պաշտօ-
նեայ , թէ՛ իր յորդորանքներովը , 3 թէ իր
անարատ վարքովը , 4 եւ թէ աւետարանին
համար համբերութեամբ տանելով ամէն տե-
սակ վիշտերու ու նեղութիւններու ։ 14 Կը
յորդորէ զանոնք որ ետ կենան կռապաշտական
ընկերութիւններէն եւ պղծութիւններէն՝ մտա-
ծելով որ իրենց անձերը կենդանի Աստուծոյ
տաճարն են ։

1 Ուստի մենք ալ ա գործակից ըլլա-
լով՝ բ կ'աղաչենք որ Աստուծոյ
շնորհքը գ պարապ տեղը ընդունած
2 չըլլաք ։ դ Ինչու որ՝ Ընդունելի ժա-
մանակի մը մէջ լսեցի քեզի՝ կ'ըսէ .
եւ փրկութեան օրը օգնութիւն ըրի
քեզի . ահա հիմա է ընդունելի ժա-
մանակը , ահա հիմա է փրկութեան

Յամի Տեառն
60

խ Գղ. գ. 1։
ծ Գղ. ա. 14։
կ Գղ. ժա. 1, 16, 17։ ժբ. 6, 11։
հ Հռով. ե. 15։
ձ Հռով. զ. 11, 12։ ժդ. 7, 8։ ա Կոր. զ. 19։ Գաղ. բ. 20։ ա Թես. ե. 10։ ա Պետ. դ. 2։
ղ Մատ. ժբ. 50։ Յով. ժե. 14։ Գաղ. ե. 6։ Փիլ. գ. 7, 8։ Կող. դ. 11։
ճ Յով. զ. 64։
մ Հռով. ը. 9։ ժզ. 7։ Գաղ. զ. 15։
յ Գաղ. ե. 6։ զ. 15։
ն Եսա. խգ. 18, 19։ կե. 17։ Եփե. բ. 15։ Յայտ. իա. 5։
շ Հռով. ե. 10։ Եփե. բ. 16։ Կող. ա. 20։ ա Յով. բ. 2։ դ. 10։
ո Հռով. գ. 24, 25։
չ Յոբ. լգ. 23։ Մաղ. բ. 7։ Գղ. գ. 6։ Եփե. զ. 20։
պ Գղ. զ. 1։
ջ Եսա. ծգ. 6, 9, 12։ Գաղ. գ. 13։ ա Պետ. բ. 22, 24։ ա Յով. գ. 5։
ռ Հռով. ա. 17։ ե. 19։ ժ. 3։

ա ա Կոր. գ. 9։
բ Գղ. ե. 20։
գ Եբր. ժբ. 15։
դ Եսա. խթ. 8։

Յամի Տեառն 60

3 օրը ։ ե Բնաւ մէկ բանով մը գայ-
թակղութիւն չենք տար, որ մեր
4 պաշտօնը չարատաւորի ։ Բայց ա-
մէն բանի մէջ մեր անձը կ'ընծա-
յենք զ Աստուծոյ սպասաւորներու
պէս՝ շատ համբերութիւնով փիշտե-
րու մէջ, տառապանքներու, նե-
5 ղութիւններու, է ծեծերու, բան-
տերու, խռովութիւններու, աշ-
խատութիւններու, հսկումներու,
6 ծոմերու մէջ ։ Մաքրութիւնով,
գիտութիւնով, երկայնմտութիւ-
նով, քաղցրութիւնով, Սուրբ Հո-
7 գիով, անկեղծ սիրով ։ ը Ճշմար-
տութեան խօսքով, թ Աստուծոյ
զօրութիւնով, ժ արդարութեան
զէնքերով՝ որ աջ կողմէն ու ձախ
8 կողմէն է ։ Փառքով ու անարգու-
թիւնով, պարսաւանքով և գո-
վութիւնով ։ մոլորեցնողներու պէս
9 ու ճշմարիտներ ։ Անծանօթներու
պէս՝ եւ ծանօթներ ։ Մեռնողներու
պէս՝ և ահա կենդանի ենք ։
խ պատժուածներու պէս, ու չսպա-
10 ննուածներ ։ Տրտմածներու
պէս՝ ու միշտ ուրախ ենք ։ աղ-
քատներու պէս՝ ու շատերը կը
հարստացընենք ։ բան մը չու-
նեցողներու պէս՝ և ամէն բան ըս-
11 տացած ենք ։ Մեր բերանը ձեզի
բացուած է՝ ով Կորնթացիք, ծ և
12 մեր սիրտը լայնցած ։ Դուք մեր
կողմէն չէք նեղուիր, կ հապա ձեր
[illegible] գթոյն կողմէ կը նեղուիք ։
13 Ուստի անոր հատուցումը ըլլալու
համար՝ (հ իբրև որդիներուս կը խօ-
սիմ ձեզի ։) դուք ալ դէպ 'ի ինծի
լայնցէք ։
14 ձ Անհաւատներուն հետ օտարա-
խառն լծակից մի ըլլաք ։ ղ Քանզի
ի՞նչ մասնակցութիւն ունի ար-
դարութիւնը անօրէնութեան հետ ։
և ի՞նչ հաղորդութիւն ունի լոյսը՝
15 խաւարին հետ ։ Եւ ի՞նչ միաբա-
նութիւն ունի Քրիստոս Բելիա-
րին հետ ։ կամ ի՞նչ բաժին ունի
հաւատացեալը անհաւատին հետ ։
16 Եւ ի՞նչ յարմարութիւն ունի Աս-
տուծոյ տաճարը կուռքերու հետ ։ ճ Վասն
զի դուք կենդանի Աստուծոյ տա-
ճարն էք, ինչպէս որ Աստուած
ըսաւ թէ, մ Անոնց մէջը պիտի բը-
նակիմ, ու անոնց մէջը պիտի քա-
լեմ, և անոնց Աստուած պիտի
ըլլամ, ու անոնք ինծի ժողովուրդ
17 պիտի ըլլան ։ յ Ասոր համար ելէ՛ք
անոնց մէջէն, ու զատուեցէ՛ք,
կ'ըսէ Տէրը, և պիղծ բանի մի
18 դպչիք ։ Ու ես ձեզ պիտի ընդու-
նիմ, ն և ես ձեզի Հայր պիտի ըլ-
լամ, ու դուք ինծի տղաքներ ու
աղջիկներ պիտի ըլլաք՝ կ'ըսէ Ամե-
նակալ Տէրը ։

ե Հռով. ժդ. 13 ։ ա Կոր. թ. 12 ։ ժ. 32 ։
զ ա Կոր. դ. 1 ։
է Գղ. ժա. 23 ։ ...
ը Գղ. դ. 2 ։ է. 14 ։
թ ա Կոր. բ. 4 ։
ժ Գղ. ժ. 4 ։ Եփե. զ. 11. 13 ։ բ Տիմ. դ. 7 ։
ի Գղ. գ. 2 ։ ե. 11 ։ ժա. 6 ։
լ ա Կոր. դ. 9 ։ Գղ. ա. 9. դ. 10. 11 ։
խ Սաղ. ճժը. 18 ։
ծ Գղ. է. 3 ։
կ Գղ. ժբ. 15 ։
հ ա Կոր. գ. 14 ։
ձ Բ Օր. է. 2. 3 ։ ա Կոր. ե. 9 ։ է. 39 ։
ղ ա Թագ. ե. 2. 3 ։ գ Թագ. ժը. 21 ։ ա Կոր. ժ. 20. 21 ։ Եփե. ե. 7. 11 ։
ճ ա Կոր. գ. 16 ։ զ. 19 ։ Եփե. բ. 21. 22 ։ Եբր. գ. 6 ։
մ Ել. իթ. 45 ։ Ղև. իզ. 12 ։ Երեմ. լա. 33 ։ լբ. 38 ։ Եզեկ. ժա. 20 ։ իզ. 25 ։ լէ. 26 ։ ...
Զաք. ը. 8 ։ ժգ. 9 ։
յ Ես. ծբ. 11 ։ Գղ. է. 1 ։ Յայտ. ժը. 4 ։
ն Երեմ. լա. 1. 9 ։ Յայտ. իա. 7 ։

Յամի Տեառն 60

## Գլ. Է

1 Իր խօսքը շարունակելով կը յորդորէ զանոնք սուրբ վարք ունենալու ։ 2 և իրեն ցուցընելու ան նոյն սէրը որ ինքը անոնց վրայ ունէր ։ 3 կը ծանուցանէ թէ իր նեղութիւններուն մէջ որչափ մխիթարութիւն ունեցաւ՝ երբոր Տիտոս իրեն պատմեց անոնց անկեղծ ապաշխարութիւնը որ իր առջի նամակը պատճառեր էր ։ 13 և թէ անոնց Տիտոսին ցուցուցած սէրը ու հնազանդութիւնը արդարացուցին իր պարծանքը անոնց վրայով ։

1 Ուստի սիրելի՛ք՝ որովհետև մենք
ա աս խոստմունքները ունինք,
մեր անձերը մարմինի ու հոգիի ա-
մէն կերպ պղծութենէն մաքրենք,
և սրբութիւնը կատարելագործենք
Աստուծոյ վախովը ։
2 * Ընդունեցէ՛ք մեզ ։ մէկու մը
վնաս չտուինք, ոչ մէկը եղծե-
3 ցինք, բ և ոչ մէկը զրկեցինք ։ Չէ
թէ ձեզ դատապարտելու համար
աս կը գրուցեմ ։ գ որովհետև ես
առաջուց ըսեր եմ, որ դուք մեր
սիրտերուն մէջն էք՝ մեռնելու ու
4 ապրելու ձեզի հետ ։ դ Շատ է իմ
համարձակութիւնս ձեր վրայ ։
ե շատ է իմ պարծանքս ձեզի հա-
մար ։ զ լեցուն եմ մխիթարու-
թիւնով, աւելցած եմ ուրախու-
թիւնով մեր ամէն նեղութիւննե-
5 րուն մէջ ։ է Վասն զի երբոր մենք
Մակեդոնիա հասանք, բնաւ մեր
մարմինը հանգստութիւն չունե-
ցաւ ։ ը հապա ամէն կողմանէ նե-
ղութիւն կը քաշէինք ։ թ դուրսէն
պատերազմներ կային, ու ներսէն
6 վախեր ։ ժ Բայց Աստուած՝ որ խո-
նարհները կը մխիթարէ, ի մեզ մը-
7 խիթարեց Տիտոսի գալովը ։ Եւ
չէ թէ միայն անոր գալովը, հապա
ան մխիթարութիւնովն ալ՝ որով
ինքը մխիթարուեր էր ձեզմով,
երբոր մեզի պատմեց ձեր բաղձան-
քը, ձեր ողբը, ձեր ինծի համար
ունեցած նախանձաւորութիւնը,
անանկ որ ալ աւելի ուրախ եղայ ։
8 Ինչու որ եթէ ձեզ տրտմեցուցի ան
թուղթովը, չեմ զղջար, (լ թէև
զղջացեր էի ։) քանզի կը տեսնեմ՝
որ ան թուղթը ձեզ տրտմեցուց,
9 թէև քիչ մը ատեն ։ Արդ՝ ու-
րախ եմ, չէ թէ որ տրտմեցաք ։
հապա որ ապաշխարութեան հա-
մար տրտմեցաք ։ որովհետև դուք
Աստուծոյ ուզածին պէս տրտմե-
ցաք, անանկ որ բանով մըն ալ
10 մեզմէ վնաս չքաշէք ։ լ Ինչու որ
Աստուծոյ ուզածին պէս եղած
տրտմութիւնը՝ փրկութեան հա-
մար ապաշխարութիւն կը գործէ,
որ զղջանալու բան չէ ։ խ բայց աշ-
խարհի տրտմութիւնը մահ կը գոր-
11 ծէ ։ Քանզի ահա աս բանը՝ որ
դուք Աստուծոյ ուզածին պէս
տրտմեցաք, ձեր մէջը որչափ ջանք

ա Գղ. զ. 18 ։ ա Յով. գ. 3 ։
* Կամ համբերեցէ՛ք
բ Գոր. ի. 33 ։ Գղ. ժբ. 17 ։
գ Գղ. զ. 11. 12 ։
դ Գղ. գ. 12 ։
ե ա Կոր. ա. 4 ։ Գղ. ա. 14 ։
զ Գղ. ա. 4 ։ Փիլ. բ. 17 ։ Կող. ա. 24 ։
է Գղ. բ. 13 ։
ը Գղ. դ. 8 ։ Բ Օր. լբ. 25 ։
թ Գղ. ա. 4 ։
ժ Տես Գլ. բ. 13 ։
ի Գղ. բ. 4 ։
լ բ Թագ. ժբ. 13 ։ Մատ. իզ. 75 ։
խ Առակ. ժէ. 22 ։

Յամի Տեառն 60

ա Գղ. բ. 4։
բ Հռով. ժե. 32։
գ Գղ. բ. 9։ Փիլ. բ. 12։
դ Բ Թես. գ. 4։ Փիլմ. 8։ 21։

գործեց , ո՛րչափ չքմեղութիւն ,
ո՛րչափ սրտմտութիւն , որչափ
վախ , ո՛րչափ բաղձանք , ո՛րչափ նա֊
խանձաւորութիւն , որչափ վրէժ֊
խնդրութիւն . ամէն կերպով ինք֊
զինքնիդ ցուցուցիք թէ այս բա֊
12 նին մէջ մաքուր էք ։ Ուրեմն ան
որ ես ձեզի գրեցի , չէ թէ զրկան֊
քը ընողին համար էր , և չէ թէ
զրկանքը կրողին համար , ա հապա
որ ձեր վրայ մեր ունեցած հոգը
յայտնի ըլլայ ձեզի՝ Աստուծոյ
13 առջեւ ։ Ուստի ան ձեր մխիթա֊
րութեանը համար մենք մխիթա֊
րուեցանք . շատ աւելի ալ ուրա֊
խացանք Տիտոսի ուրախութեանը
համար . բ ինչու որ անոր հոգին ձեր
ամէնէն հանգստութիւն գտեր էր ։
14 Վասն զի ինչ որ ես անոր առջեւ
ձեզի համար պարծենցայ՝ ամօթով
չեղայ . հապա ինչպէս որ ամէն բան
ճշմարտութիւնով խօսեցանք ձե֊
զի , անանկ ալ Տիտոսին առջեւ
պարծենալնիս ճշմարիտ եղաւ ։
15 Նաև անոր սէրը աւելի է ձեր վրայ ,
գ երբոր կը յիշէ ձեր ամենուն հնա֊
զանդութիւնը , թէ ինչպէս վա֊
խով ու դողով անիկայ ընդունեցեր
16 էք ։ Ուստի ուրախ եմ դ որ ամէն
բանի մէջ ձեր վրայ վստահութիւն
ունիմ ։

ԳԼ. Ը

1 Առաքեալը օրինակ բերելով Մակեդոնացի֊
ները՝ կը յորդորէ Կորնթացիները որ առատա֊
ձեռնութեամբ օգնութիւն ընեն Երուսաղէմի
աղքատ սուրբերուն . 7 կը յիշեցնէ իրենց
առջի ջանքը , 9 Քրիստոսի օրինակը , 14 և ան
հոգևոր օգուտը որ ունենալու էին ան օգնու֊
թիւնը ընելովնին . 16 գովութեամբ կը խօսի
Տիտոսին և ուրիշ եղբայրներուն յօժարամը֊
տութեանը վրայով՝ որոնք իր խնդրանօքը և
իր յորդորանքովը անոնց գացեր էին բուն աս
գործիս համար ։

ա Մար. ժբ. 44։
բ Գոր. ժա. 29։ Իդ. 17։ Հռով. ժե. 25. 26. ա Կոր. ժզ. 1. 3. 4։ Գղ. թ. 1։
գ Հմր. 17։ Գղ. ժբ. 18։

1 Արդ՝ եղբայրներ՝ ձեզի կը ծանու֊
ցանեմ Աստուծոյ շնորհքը , որ
Մակեդոնացւոց եկեղեցիներուն
2 տրուած է . Որ նեղութեան մեծ
փորձին մէջ՝ իրենց ուրախութեանը
առաւելութիւնը երեցաւ . ա և
իրենց ծանր աղքատութիւնը աւելի
մեծ առատաձեռնութիւն եղաւ ։
3 Ինչու որ ես կը վկայեմ որ իրենց
կարողութեանը չափովը՝ ու կարո֊
4 ղութենէն ալ աւելի , Իրենց կամ֊
քովը շատ աղաչանքով կ՚աղաչէին՝
որ տուրքերը , բ ու սուրբերուն հա֊
մար եղած պաշտօնին մասնակցու֊
5 թիւնը ընդունինք ։ Եւ չէ թէ
որչափ որ մենք կը յուսայինք ,
հապա անձերնին ալ տուին , առաջ
Տէրոջը՝ ու ետքը մեզի Աստուծոյ
6 կամքովը . գ Որ Տիտոսին աղաչե֊
ցինք՝ թէ ինչպէս որ անիկայ ա֊
ռաջուց սկսեց , անանկ ալ ձեր
մէջը կատարէ աս շնորհքն ալ ։

7 ա Բայց ինչպէս որ ամէն բանով ա֊
ռատացած էք դուք , ( հաւատքով՝
ու խօսքով՝ ու գիտութիւնով՝ և
ամէն ջանքով՝ ու ձեզմէ մեր վրայ
եղած սիրովը , ) բ նոյնպէս որ աս
8 շնորհքով ալ առատանաք . գ Չէ
թէ հրամայելով մը կը զրուցեմ ,
հապա ուրիշներուն ջանքին պատ֊
ճառովը , և որ փորձեմ ձեր սիրոյն
9 հարազատութիւնը ։ Քանզի դուք
գիտէք մեր Տէր Յիսուս Քրիստոսի
շնորհքը , դ թէ ինքը ձեզի համար
աղքատ եղաւ՝ ան որ հարուստ էր ,
որ դուք անոր աղքատանալովը հա֊
10 րըստանաք ։ ե Եւ աս բանիս մէջ
խրատ մը կու տամ . զ ինչու որ ա֊
սիկայ ձեր օգտին համար է . դուք
որ չէ թէ միայն ընելը , է հապա կա֊
մենալն ալ առաջուց սկսեցիք՝ ան֊
11 ցած տարուընէ հետէ . Ուստի հի֊
մա ընելն ալ կատարեցէք . որ ին֊
տոր կամաց յօժարութիւն կայ ,
նոյնպէս ալ ընելը ունեցածներնուդ
12 չափովը ըլլայ ։ ը Վասն զի թէ որ
առաջ յօժարութիւնը ըլլայ՝ մարդ
ունեցածին չափովը ընդունելի է ,
ու չէ թէ չունեցածին չափովը ։
13 Ինչու որ չէ թէ ես ուրիշներուն
հանգստութիւն կ՚ուզեմ , ու ձեզի
14 նեղութիւն . Հապա հաւասարու֊
թիւնով՝ հիմակուան ատենս ձեր
աւելին անոնց պակասութիւնը լեցը֊
նէ . որպէս զի անոնց աւելին ալ օր
մը օգնութիւն ըլլայ ձեր պակասու֊
թեանը , որ հաւասարութիւն ըլ֊
15 լայ . ինտոր որ գրուած է . թ Ան
որ շատ ժողվեց , չաւելցաւ . ու ան
16 որ քիչ , չպակսեցաւ ։ Բայց շնոր֊
հութիւն Աստուծոյ , որ նոյն հոգը
ձեր վրայ՝ Տիտոսին սիրտը ձգեց .
17 Ինչու որ ի մեր աղաչանքը ընդունեց ,
և իր յօժարամտութիւնը շատ ըլ֊
լալով՝ իր կամքովը ելաւ ձեզի գա֊
18 լու ։ Ու անոր հետ ղրկեցինք ժ ան
եղբայրը , որուն գովութիւնը աւե֊
տարանին մէջն է՝ բոլոր եկեղեցի֊
19 ներուն մէջ . Եւ ոչ միայն այսքան ,
ա հապա նաև եկեղեցիներէն ընտ֊
րուեցաւ մեզի ճամբորդութեան ըն֊
կեր ըլլալու աս տուրքերուն մէջ , բ որ
մենք կը ծառայենք Տէրոջը փառքին
համար , ու մեր յօժարութեամբը ։
20 Բայց աս մասին զգուշութիւն կ՚ը֊
նէինք , որ չըլլայ թէ մէկը արատ
մը դնէ մեր վրայ աս առատու֊
թեանս մէջ , որուն մենք կը ծա֊
21 ռայենք ։ Քանզի ոչ միայն Տէրոջը
առջեւ , գ հապա մարդոց առջեւն
ալ բարի բաներ ընելու հոգ կը տա֊
22 նինք ։ Եւ անոնց հետը մեր եղբայ֊
րը ղրկեցինք , որն որ շատ բաներու
մէջ փորձելով՝ շատ անգամ յօժա֊
րամիտ գտեր ենք . ու հիմա՝ ալ

Յամի Տեառն 60

ա Ա Կոր. ա. 5։ ժբ. 8։
բ Գղ. թ. 8։
գ Ա Կոր. է. 6։
դ Մատ. ը. 20։ Ղուկ. թ. 58։ Փիլ. բ. 6. 7։
ե Ա Կոր. է. 25։
զ Առակ. ժթ. 17։ Մատ. ժ. 42։ Ա Տիմ. զ. 18. 19։ Եբր. ժգ. 16։
է Գղ. թ. 2։
ը Մար. ժբ. 43. 44։ Ղուկ. իա. 3։
թ Ելք. ժզ. 18։
ի Հմր 6
ժ Գղ. ժբ. 18։
ա Ա Կոր. ժզ. 3. 4։ Հմր 4. 6. 7։ Գղ. թ. 8։
բ Գղ. դ. 15։
գ Հռով. ժբ. 17։ Փիլ. դ. 8։ Ա Պետ. բ. 12։

Ցամի Տեառն 60

աւելի յօժարամիտ՝ ան մեծ վստա-
հութիւնովը որ ձեր վրայ ունի ։
23 Բայց թէ որ Տիտոսին համար կը
հարցնէք, շանիկայ իմ ընկերս է,
և ձեր մէջը իմ գործակիցս․ իսկ
թէ որ մեր եղբայրներուն համար,
անոնք եկեղեցիներուն խրկածներն
24 են, ու Քրիստոսի փառքը ։ Ուստի
ձեր սիրոյն՝ ևւ մեր ձեր վրայով
պարծենալուն ապացոյցը անոնց
վրայ ցուցուցէք եկեղեցիներուն
առջևը ։

զ Փիլ․ բ․25։
ե Գղ․ է․14։ ժ․2։

## ԳԼ․ Թ

1 Առաքեալը կը ցուցընէ պատճառը՝ թէ ինչո՛ւ համար, (թէև ինքը գիտէր անոնց յօժարամտութիւնը,) յառաջագոյն խրկեց Տիտոսը և միւս եղբայրները․ 6 կը յորդորէ որ առատ ողորմութիւն տան, իբր թէ առ ուտածնին տեսակ մը սերմ ցանել էր՝ 10 որ առատօրէն պտուղ պիտի տար իրենց ։ 13 և պատճառ պիտի ըլլար որ մեծ շնորհակալութիւն մատուցուի Աստուծոյ ։

1 ա Վասն զի սուրբերուն ըլլալու պաշ-
տօնին վրայով ինծի աւելորդ
2 է ձեզի գրել․ բ Ինչու որ գիտեմ
ես ձեր յօժարամտութիւնը, զո-
րուն վրայով կը պարծենամ ձեզի
համար Մակեդոնացւոց մէջ, գ թէ
Աքայեցիք անցած տարուընէ հետէ
պատրաստ են․ ու ձեր բարի նա-
3 խանձը շատերը գրգռեց ։ Եւ ասո-
դ եղբայրները խրկեցի, որ մեր ձեզի
համար պարծենալը՝ աս մասին
մէջ պարապ չըլլայ․ հապա պատ-
րաստ գտնուիք՝ ինչպէս որ ըսեր
4 եմ․ Որ չըլլայ թէ երբոր Մակե-
դոնացիք իմ հետս գան՝ ու ձեզ
անպատրաստ գտնեն, ալ մենք
(որ չըսենք թէ դուք,) ամօթով
մնանք աս *պարծանքին վստահու-
5 թեանը մէջ ։ Ուստի հարկաւոր
սեպեցի եղբայրներուն աղաչել, որ
առաջուց ձեզի գան, ու առաջուց
կարգի գնեն ան ձեր առաջուց ծա-
նուցուած ընծան՝ որ պատրաստ
ըլլայ, անանկ որ ընծայի պէս ըլ-
լայ, ու չէ թէ ագահութեան պէս ։
6 ե Բայց ասիկայ կը ծանուցանեմ՝ թէ
ան որ խնայելով կը սերմանէ՝ խը-
նայելով պիտի հնձէ․ ու ան որ ա-
ռատութիւնով կը սերմանէ՝ առա-
7 տութիւնով պիտի հնձէ ։ Ամէն
մէկը ինչպէս որ իր սրտովը կը յօ-
ժարի, նոյնպէս տայ․ չէ՛ թէ
տրտմութեամբ կամ ստիպմամբ․
զ Ինչու որ Աստուած յօժարակամ
8 տուողը կը սիրէ ։ է Բայց կարող
է Աստուած բոլոր շնորհքները ձե-
զի առատօրէն տալու․ որ ամէն
բանի մէջ ամէն ատեն բոլոր ձեզի
պէտք եղածը ունենալով, ամէն
բարի գործքերով առատանաք․
9 Ինչպէս որ գրուած է․ ը Ցրուեց՝
ու աղքատներուն տուաւ․ անոր

ա Գոր․ ժա․ 29։ Հռով․ ժե․ 26։ ա Կոր․ ժզ․1։ Գղ․ ը․4։ Գաղ․բ․10։
բ Գղ․ը․19։
գ Գղ․ը․24։
դ Գղ․ը․10։
ե Գղ․ բ․ 6։ 17։ 18։ 22։
* Որ մանք շնոր-հքն։
ե Առակ․ժա․ 24։ ժթ․17։ իբ․9․ Գաղ․ զ․ 8։ 9։
է բ Օր․ժե․7։ ըՅլ․ իե․ 2։ լե․5։Առակ․ ժա․ 25։ Հռով․ժբ․8։ Գղ․ ր․ 12։
ը Առակ․ժա․ 24։ 25։ իբ․ 27։ Փիլ․ դ․ 19։
ը Սաղ․ ճժբ․ 9։

Ցամի Տեառն 60

արդարութիւնը յաւիտեան կը մը-
10 նայ ։ Եւ անիկայ որ սերմ ցանո-
ղին սերմ կը պարգևէ, †և կերա-
կուրի համար հաց, ձեր սերմանիքը
պիտի պարգևէ և աւելցընէ", և ու
ձեր արդարութեան պտուղները
11 պիտի շատցընէ․ Որ ամէն բանի
մէջ հարստանաք ամէն կերպ ա-
ռատութիւնով, ժ որ մեր ձեռքովը
կը պատճառէ գոհութիւն դէպ
12 Աստուծոյ ։ Ինչու որ աս պաշտօ-
նիս մատակարարութիւնը չէ թէ
միայն ի սուրբերուն պակասութիւնը
լեցընելու համար է, հապա նաև
աւելի շատցընելու Աստուծոյ գո-
13 հութիւն տալը․ Երբոր ձեր աս
պաշտօնին փորձովը փառաւորեն
զԱստուած՝ Քրիստոսի աւետարա-
նը խոստովանելնուդ հնազանդու-
թեանը համար, ևւ առատաձեռ-
նութիւննիդ անոնց ու ամենուն
14 հաղորդելնուդ համար․ Եւ իրենց
աղօթքը ձեզի համար մատուցանեն,
ի փափաք ունենալով ձեր վրայ՝
Աստուծոյ գերազանց շնորհքին
15 համար՝ որ ձեր մէջն է ։ Ալ գո-
հութիւն Աստուծոյ՝ ճանոր չպատ-
մուելու պարգևին համար ։

է Եսա․ ծե․10։
† Կամ ինքը կերակուրի համար հաց ալ պիտի պարգևէ, և ձեր սերմանիքը պիտի աւելցընէ։
ը Ովս․ ժ․12։
ե Գղ․ ա․ 11։ դ․ 15։
ժ Գղ․ը․14։
ի Մատ․ե․16։
ի Եբր․ ժգ․ 16։
ի Գղ․ ը․ 1։
զ Յակ․ա․17։

## ԳԼ․ Ժ

1 Առաքեալը իր անձը և մարմնին երևոյթը արհամարհող սուտ առաքեալներուն դէմ՝ յառաջ կը բերէ իր հոգևոր իշխանութիւնը, 7 հաստատելով որ իր գալու ատենը այնչափ զօրաւոր պիտի ըլլայ իր խօսքովը, որչափ որ իր նամակովը է իր հեռաւորութեան ատենը․ 12 կը յանդիմանէ զանոնք չափէ դուրս առաջ անցնելնուն և ուրիշին աշխատանքովը պարծենալնուն համար ։

1 ա Բայց ես Պօղոսս ձեզի կ'աղաչեմ
Քրիստոսի հեզութիւնովը ու
քաղցրութիւնովը, բ որ երես առ
երես գտնուած ատենս՝ խոնարհ եմ
ձեր մէջը, բայց հեռուէն կը հա-
2 մարձակիմ ձեզի․ Կ'աղաչեմ՝ գ որ
չըլլայ թէ մօտէն ալ համարձակիմ
ան վստահութիւնովը՝ որով միտք
ունիմ յանդգնիլ մէկ քանիներուն
վրայ, որոնք որ մեր վրայով անանկ
կը կարծեն՝ թէ մարմնաւորապէս
3 կը քալենք ։ Քանզի թէպէտ մար-
մնի մէջ կը քալենք, բայց չէ թէ
մարմնաւորապէս զինուորութիւն
4 կ'ընենք․ դ Ինչու որ մեր զինուո-
րութեան ե զէնքերը մարմնաւոր
չեն, զ հապա Աստուծմէ զօրու-
թիւն առած՝ է ամրոցները քակե-
լու․ մենք խորհուրդներ կը քա-
5 կենք, Եւ ը Աստուծոյ գիտութեա-
նը դէմ բոլոր հպարտացած բարձր
բաները, ու բոլոր միտքերը Քրիս-
տոսի հնազանդութեանը գերի կ'ը-
6 նենք․ Ու պատրաստ ունինք վը-
րէժ առնելու ամէն անհնազանդու-
թենէ, ժ երբոր ձեր հնազանդու-

ա Հռով․ ժբ․ 1։
բ Հմր 10։ Գղ․ ժբ․ 5։ 7։ 9։
գ ա Կոր․ դ․ 21։ Գղ․ ժգ․ 2։ 10։
դ ա Տիմ․ ա․ 18։ բ Տիմ․ բ․ 3։
ե Եփե․ զ․ 13։ ա Թես․ ե․ 8։
զ Գոր․ ե․ 22։ ա Կոր․ բ․ 5։ Գղ․ զ․ 7։ ժգ․ 3։ 4։
է Երեմ․ ա․ 10։
ը ա Կոր․ ա․ 19։ գ․ 19։
ժ Գղ․ ժգ․ 2։ 10։
ժ Գղ․ բ․ 9։ է․ 15։

Յամփ Տեառն 60

Յօհ. է. 24 ։ Գղ. ե. 12 ։ ժա. 18 ։ Ա Կոր. ժդ. 37 ։ Ա Յօհ. դ. 6 ։ Ա Կոր. գ. 23 ։ թ. 1 ։ Գղ. ժա. 23 ։ Գղ. ժդ. 10 ։ Գղ. է. 14 ։ ժր. 6 ։ Ա Կոր. բ. 3 ։ 4 ։ Հմր. 1 ։ Գղ. ժբ. 5. 7. 9 ։ Գաղ. դ. 13 ։ Ա Կոր. ա. 17 ։ բ. 1. 4 ։ Գղ. ժա. 6 ։ Գղ. գ. 1 ։ ե. 12 ։ Հմր. 15 ։ Ա Կոր. գ. 5 ։ 10 ։ դ. 15 ։ թ. 1 ։ Հռով. ժե. 20 ։ Եսա. կե. 16 ։ Երեմ. թ. 24 ։ Ա Կոր. ա. 31 ։ Առակ. իէ. 2 ։ Հռով. բ. 29 ։ Ա Կոր. դ. 5 ։

7 Թէ՛ որ կատարեալ ըլլայ ։ Դուր-
սի երեւոյթի՞ն կը նայիք . Եթէ որ
մէկը վստահ ըլլայ իր անձին վրայ՝
թէ ինքը Քրիստոսինն է , աս նո-
րէն ինքիրմէ խորհի՝ որ ինչպէս
ինքը Քրիստոսինն է , անանկ ալ
8 մենք ։ Քանզի թէ որ աւելի ալ
պարծենալու ըլլամ աս մեր իշ-
խանութեանը վրայով՝ որ Տէրը
մեզի տուաւ ձեզ շինելու , ու չէ
թէ քակելու համար , պիտի չա-
9 մըչնամ ։ Որ անանկ չսեպուիմ՝
որպէս թէ ես թուղթերովս ձեզի
10 վախ մը կը ձգեմ . Քանզի՝ Անոր
թուղթերը ( կ'ըսէ մէկը , ) ծանր ու
զօրաւոր են , բայց անոր մարմինին
երեւոյթը տկար է , ու խօսքը ա-
11 նարգ . Անանկ մարդը աս թող
խորհի , որ մենք հեռուէն ինչպէս
որ ենք խօսքով մեր թուղթերովը ,
մօտէն ալ անանկ պիտի ըլլանք գործ-
12 քով ։ Ինչու որ մենք չենք հա-
մարձակիր մեր անձը կշռքի դնել
ու բաղդատել ոմանց հետ , որ ինք-
զինքնին կը գովեն . բայց անոնք
իրենցմով իրենց անձերը չափելով ,
և զիրենք իրենց հետ բաղդատելով՝
13 չեն հասկընար ։ Բայց մենք չա-
փէ դուրս բաներով պիտի չպար-
ծենանք . հապա ան կանոնին չա-
փովը , որ Աստուած մեզի բաժին
14 տուաւ՝ մինչև ձեզի հասնելու . Չէ
թէ որպէս թէ մենք ձեզի հասած
չենք , ու ինքզինքնիս չափէն աւելի
կ'երկընցընենք . Ինչու որ Քրիս-
տոսի աւետարանովը մինչև ձեզի
15 հասանք ։ Եւ չէ թէ չափէ դուրս
բաներով՝ ուրիշներուն աշխա-
տանքովը կը պարծենանք . հապա
յոյս ունինք որ ձեր հաւատքը ա-
ւելնալուն՝ մեր կանոնին չափովը՝
ձեզմով աւելի ընդարձակինք ,
16 Ձեզմէ անդին կողմերը աւետարանը
քարոզելու , և չէ թէ պատրաստ
բաներու վրայ պարծենալու ուրիշի
17 մը կանոնով ։ Բայց ան որ կը
պարծենայ , թող Տէրոջմով պար-
18 ծենայ ։ Վասն զի չէ թէ ան՝ որ
իր անձը կը գովէ , անիկայ է ընտ-
րուածը , հապա ան՝ որ Տէրը զա-
նիկայ կը գովէ ։

ԳԼ. ԺԱ

1 Նախանձով լեցուած Կորնթացւոց վրայ՝ ու-
րոնք կ'երեւնայ թէ սուտ առաքեալները աւելի
պատուաւոր կը համարէին , կը ստիպուի իր
անձին վրայ պարծենալ ։ 5 Թէ ինքը հաւա-
սար է երեւելի առաքեալներուն , 7 և թէ ինքը
աւետարանը ձրի քարոզեց անոնց՝ բնաւ մէ-
կուն նեղութիւն չտալով իր ապրուստին հա-
մար . 13 կը ցուցընէ թէ ինքը օրէնքին կող-
մանէ ստոր չէ ան խաբեբայ գործաւորներէն ,
23 և Քրիստոսի ծառայութեանը , ու իր պաշ-
տօնին համար իր կրած նեղութիւններուն մէջ
շատ գերազանց է անոնցմէ ։

1 Երանի թէ քիչ մը ներէիք իմ
անմտութեանս . և իրաւցընէ
2 համբերեցէ՛ք ինծի ։ Վասն զի ձեր
վրայ նախանձաւոր եմ Աստուծոյ
նախանձովը . Ինչու որ ես ձեզ
մէկ էրկան մը նշանեցի՝ մաքուր
կոյսի մը պէս Քրիստոսի դիմացը
3 հանելու ։ Միայն թէ կը վախ-
նամ՝ չըլլայ թէ ինչպէս որ օձը
Եւան խաբեց իր խորամանկու-
թիւնովը , անանկ ալ ձեր միտ-
քերը ապականին Քրիստոսի վրայ
4 եղած միամտութենէն ։ Վասն զի
թէ որ մէկը գալու ըլլայ՝ և ուրիշ
Յիսուս քարոզէ՝ որ մենք ան չքա-
րոզեցինք , կամ ուրիշ հոգի առ-
նէք՝ որ չառիք , կամ ուրիշ աւե-
տարան՝ որն որ չէք ընդունած , ա-
նանկներուն աղէկ կը համբերէիք ։
5 Քանզի ես ասանկ կը սեպեմ՝ որ
ամենէն երեւելի առաքեալներէն բա-
6 նով մըն ալ պակաս չեմ ։ Եւ
թէպէտ խօսքի կողմէ անկիրթ եմ ,
բայց չէ թէ գիտութեան կողմէ ,
Սակայն ամէն բանի մէջ բոլորո-
վին անձերնիս ձեզի յայտնի ը-
7 րինք ։ Միթէ յանցա՞նք գործած
եղայ՝ որ Աստուծոյ աւետարանը
ձեզի ձրի քարոզելով իմ անձս
խոնարհեցուցի , որ դուք բարձ-
8 րանաք ։ Ուրիշ եկեղեցիները կո-
ղոպտեցի՝ անոնցմէ թոշակ առ-
նելով ձեզի ծառայելու համար ։
9 Ու ձեզ քովը գտնուած ատենս՝
երբոր պակսութիւն մը ունեցայ ,
ոչ մէկուն ծանրութիւն չըր-
տուի . Ինչու որ իմ պակսու-
թիւնս լեցուցին Մակեդոնիայէն
եկող եղբայրները . և ամէն կեր-
պով ձեզի ծանրութիւն տալէն իմ
անձս պահեցի՝ ու պիտի պահեմ
10 ալ ։ Քրիստոսի ճշմարտութիւնը
իմ ներսի դիս է , որ աս իմ պար-
ծենալս պիտի չխափանուի ինծմէ
11 Աքայիայի կողմերը ։ Ինչո՞ւ . որ-
պէս թէ չե՞մ սիրեր ձեզ . ան Աս-
12 տուած գիտէ ։ Բայց ան որ կ'ը-
նեմ՝ պիտի ընեմ ալ , որ կտրեմ
անոնց պատճառը՝ որոնք պատճառ
կը փնտռեն , որ ինչ բանով կը
պարծենան , իրենք ալ մեզի պէս
13 գտնուին ։ Ինչու որ անանկները
սուտ առաքեալներ՝ խաբեբայ բան-
ւորներ ըլլալով , Քրիստոսի առա-
քեալներուն կերպարանքը վրանին
14 կ'առնեն ։ Եւ զարմանք մը չէ .
ինչու որ ինքը Սատանան ալ լու-
սաւոր հրեշտակի կերպարանք կ'առ-
15 նէ . Ալ մեծ բան մը չէ , որ անոր
պաշտօնեաներն ալ՝ արդարու-
թեան պաշտօնեաներու նման կեր-
պարանք կ'առնեն . Նորոնց վերջը
իրենց գործքերուն համեմատ պիտի

Յամփ Տեառն 60

Հմր. 16 ։ Գղ. ե. 13 ։ Գաղ. դ. 17 ։ 18 ։ Ովս. բ. 19 ։ 20 ։ Ա Կոր. դ. 15 ։ Ղև. իա. 13 ։ Կող. ա. 28 ։ Ծն. գ. 4 ։ Յոհ. ը. 44 ։ Եփե. գ. 24 ։ Կող. ր. 4 ։ 8 ։ 13 ։ Ա Տիմ. ա. 3 ։ դ. 1 ։ Եբր. ժգ. 9 ։ Բ Պետ. գ. 17 ։ Գաղ. ա. 7 ։ 8 ։ Ա Կոր. ժե. 10 ։ Գղ. ժբ. 11 ։ Գաղ. բ. 6 ։ Ա Կոր. ա. 17 ։ բ. 1 ։ 13 ։ Գղ. ժ. 10 ։ Եփե. գ. 4 ։ Գղ. դ. 2 ։ ե. 11 ։ ժբ. 12 ։ Գոր. ժը. 3 ։ Ա Կոր. թ. 6 ։ 12 ։ Գղ. ժ. 1 ։ Գոր. ի. 33 ։ Գղ. ժբ. 13 ։ Ա Թես. բ. 9 ։ Բ Թես. գ. 8 ։ 9 ։ Փիլ. դ. 10 ։ 15 ։ 16 ։ Գղ. ժբ. 14 ։ 16 ։ Հռով. թ. 1 ։ Ա Կոր. թ. 15 ։ Գղ. գ. 11 ։ է. 3 ։ ժբ. 15 ։ Ա Կոր. թ. 12 ։ Գոր. ժե. 24 ։ Հռով. ժզ. 18 ։ Գաղ. ա. 7 ։ գ. 12 ։ Փիլ. ա. 15 ։ Բ Պետ. բ. 1 ։ Ա Յոհ. դ. 1 ։ Յայտ. բ. 2 ։ Գղ. ր. 17 ։ Փիլ. դ. 2 ։ Տիտ. ա. 10 ։ 11 ։ Գաղ. ա. 8 ։ Գղ. գ. 9 ։ Փիլ. գ. 19 ։

Ցամ. Տեառն 60

ա Հռմ. 1. Գլ. ԺԲ. 6. 11.
Ա. Կոր. Է. 6. 12.
Գլ. Թ. 4.
Փիլ. Գ. 3. 4.
Ա. Կոր. Դ. 10.
Գաղ. Բ. 4. Դ. 9.
Գլ. Ժ. 10.
Փիլ. Գ. 4.
Գործ. ԻԲ. 3. Հռոմ. ԺԱ. 1. Փիլ. Գ. 5.
Ա. Կոր. ԺԵ. 10.
Գործ. Թ. 16. Ի. 23. ԻԱ. 11. Գլ. Զ. 4. 5.
Ա. Կոր. ԺԵ. 30. 31. 32. Գլ. Ա. 9. 10. Դ. 11. Զ. 9.
Բ. Օր. ԻԵ. 3.
Գործ. ԺԶ. 22.
Գործ. ԺԴ. 19.
Գործ. ԻԷ. 41.
Գործ. Թ. 23. ԺԴ. 5. ԺԷ. 5. Ի. 3. ԻԱ. 31. ԻԳ. 10. 11. ԻԵ. 3.
Գործ. ԺԴ. 5. ԺԹ. 24.
Գործ. Ի. 31. Գլ. Զ. 5.
Ա. Կոր. Դ. 11.
Տես Գործ. Ի. 18. Հռովմ. 14.
Ա. Կոր. Ը. 13. Թ. 22.
Գլ. ԺԲ. 5. 9. 10.
Հռովմ. Ա. 9. Թ. 1. Գլ. Ա. 23. Գաղ. Ա. 3. Ա Թես. Բ. 5.

16 ըլլայ ։ Դարձեալ կ՚ըսեմ. չըլլայ
որ մէկը զիս անմիտ սեպէ. հապա
թէ չէ՝ գոնէ անմիտի մը պէս զիս
ընդունեցէք, որ ես ալ քիչ մը
17 պարծենամ ։ Ան որ ես կը խօսիմ՝
չէ թէ Տէրոջը համեմատ պէս կը խօ֊
սիմ, հապա որպէս թէ անմտու֊
թիւնով մը՝ այս պարծենալուն
18 վստահութիւնովը ։ Որովհետեւ
շատերը մարմնոյ կողմանէ կը պար֊
ծենան, ես ալ պիտի պարծենամ ։
19 Քանզի դուք իմաստուն ըլլալով՝
յօժարութեամբ կը համբերէք ան֊
20 միտներուն ։ Ինչու որ կը համբե֊
րէք, թէ որ մէկը ձեզ ծառայե֊
ցընէ, թէ որ մէկը ձեր ստացուած֊
քը ուտէ, թէ որ մէկը ձեզմէ բան
մը առնէ, թէ որ մէկը ձեր վրայ
հպարտանայ, թէ որ մէկը ձեր երե֊
21 սին զարնէ ։ Քամահրանքի ձեւով
կը խօսիմ, իբր թէ մենք տկար
էինք. բայց ինչ բանով որ մէկը
յանդգնութեամբ կը համարձակի՝ (ան֊
մտութեամբ կը խօսիմ,) ես ալ
22 կը համարձակիմ ։ Անոնք Եբրայե֊
ցի՞ են, ես ալ. Իսրայելացի՞ են,
ես ալ. Աբրահամի սերո՞ւնդ են,
23 ես ալ. Քրիստոսի պաշտօնեանե՞ր
են, (յիմարաբար կը խօսիմ՝) ալ
աւելի ես. աշխատանքներով՝ ա֊
ւելի, ծեծերով՝ ալ աւելի, բան֊
տարկութիւններով՝ աւելի, մա֊
հուան վտանգներով՝ շատ անգամ.
24 Հրեաներէն հինգ անգամ քառա֊
սունէն մէկ մը պակաս ծեծ կերայ.
25 Երեք անգամ ձաղկով ծեծուե֊
ցայ. Մէկ անգամ քարկոծուե֊
ցայ. Երեք անգամ նաւաբեկու֊
թեան հանդիպեցայ. գիշեր մը ու
ցորեկ մը ծովուն անդունդը մնացի.
26 Շատ անգամ ճամբորդութեանց
մէջ շրջագայութեամբ. գետերէն վը֊
տանգներ, աւազակներէն վտանգ֊
ներ, իմ ազգէս վտանգներ, հե֊
թանոսներէն վտանգներ, քաղաքի
մէջ վտանգներ, անապատի մէջ
վտանգներ, ծովի վրայ վտանգներ,
սուտ եղբայրներու մէջ վտանգներ
27 կրեցի. Ջանքի ու աշխատանքի
մէջ, շատ անգամ քնահատու֊
թեան մէջ, անօթութեան ու
ծարաւութեան մէջ, շատ անգամ
ծոմ կենալու մէջ, ցուրտի ու մեր֊
28 կութեան մէջ էի. Չգէ արտաքին
նեղութիւնները, ամէն օրուան զ֊
բաղմունքը՝ բոլոր եկեղեցիներուն
29 հոգը վրաս կը դիզուէր ։ Ո՞վ կը
տկարանայ, ու ես չեմ տկարա֊
նար. ո՞վ կը գայթակղի, ու իմ
30 սիրտս չայրիր ։ Թէ որ պարծենալ
պէտք ըլլայ, տկարութեանս բա֊
31 ներուն վրայ պարծենամ ։ Աս֊
տուած և մեր Տէր Յիսուս Քրիս֊
տոսի Հայրը, Նոր յաւիտեան օրհ֊
նեալ է, գիտէ որ սուտ չեմ զրու֊
32 ցեր ։ Դամասկոսի մէջ Արետա
թագաւորին ազգապետը զիս բռնել
ուզելով՝ Դամասկացւոց քաղաքը
33 պահապաններ դրեր էր. Ու ես
պատուհանին մէջէն զամբիւղով
պատէն վար կախուեցայ, ու անոր
ձեռքէն փախայ ։

## ԳԼ. ԺԲ

1 Պօղոս իր առաքելութիւնը գովելու համար՝ թէեւ կրնար պարծենալ իրեն եղած յայտնութիւններուն վրայ, 9 բայց աւելի աղէկ կը համարի իր տկարութեանցը վրայ պարծենալ, 11 յանդիմանելով զանոնք որ ստիպեցին զինքը այսպէս պարծենալու. 14 կը խոստանայ նորէն իրենց երթալ հայրական սիրով մը. 20 բայց կը վախնայ որ ինքը պիտի ցաւի՝ շատ գայթակղութիւններ և անկարգութիւններ գտնելով մէջերնին ։

1 Պարծենալ պէտք ըլլայ ու, բայց
ինծի անօգուտ է. միայն թէ
Տէրոջը տեսիլքներուն ու յայտնու֊
2 թիւններուն գամ ։ Մարդ մը գի֊
տեմ Քրիստոսով տասնուչորս տա֊
րի առաջ, (եթէ մարմնով էր՝
չեմ գիտեր, և եթէ առանց մար֊
մնի՝ չեմ գիտեր, Աստուած գի֊
տէ,) որ անանկը յափշտակուե֊
3 ցաւ մինչեւ երրորդ երկինքը ։ Ու գի֊
տեմ անանկ մարդ մը, (եթէ մար֊
մնով՝ և եթէ առանց մարմնի,
չեմ գիտեր, Աստուած գիտէ,)
4 Որ դրախտը յափշտակուեցաւ՝ ու
լսեց չպատմուելու խօսքեր, որ մար֊
5 դու արժան չէ խօսիլ ։ Ես ա֊
նանկին համար պիտի պարծենամ.
բայց իմ անձիս համար պիտի չը֊
պարծենամ, հապա միայն տկա֊
6 րութեանս վրայ ։ Ինչու որ եթէ
պարծենալ ալ ուզեմ՝ անմիտ պի֊
տի չըլլամ. որովհետեւ շիտակը
պիտի զրուցեմ. բայց կը խնայեմ
խօսելու՝ որ չըլլայ թէ մէկը իմ վրաս
աւելի համարում ունենայ, քան
որչափ որ իմ վրաս կը տեսնէ, կամ
7 ինծմէ կը լսէ ։ Ու որ չըլլայ թէ
ես հպարտանամ խիստ շատ յայտ֊
նութիւններուն համար, ինծի
մարմնի խայթոց մը տրուեցաւ՝
Սատանայի հրեշտակ մը՝ զիս նե֊
ղելու համար, որ չըլլայ թէ հպար֊
8 տանամ ։ Անոր համար երեք ան֊
գամ աղաչեցի Տէրոջը, որ մէկդի
9 ընէ ինծմէ ։ Ու ըսաւ ինծի. Իմ շը֊
նորհքս հերիք է քեզի. ինչու որ
իմ զօրութիւնս տկարութեան մէջ
կը կատարուի. ուստի մեծ յօժա֊
րութեամբ աւելի իմ տկարու֊
թիւններուս վրայ պիտի պարծե֊
նամ, որ Քրիստոսի զօրութիւնը
10 իմ վրաս հանգչի ։ Անոր համար
հաճեր եմ ես տկարութիւններու,
նախատինքներու, տառապանք֊

Ցամ. Տեառն 60

Հռոմ. Թ. 5.
Գործ. Թ. 24. 25.
Հռովմ. ԺԶ. 7. Գլ. Ե. 17. Գաղ. Ա. 22.
Գործ. ԻԲ. 17.
Յա. Տ. 46. Լիաւոտրութեանց Գործ. ԺԴ. 6.
Ղուկ. ԻԳ. 43.
Գլ. ԺԱ. 30.
Գլ. Ժ. 8. ԺԱ. 16.
Տես Եզեկ. ԻԸ. 24. Թուոց. Լ. 13. 14.
Յոբ. Բ. 7. Ղուկ. ԺԳ. 16.
Տես Բ Օր. Գ. 23—27. Մատ. ԻԶ. 44.
Գլ. ԺԳ. 4.
Ա. Պետ. Դ. 14.
Հռովմ. Ե. 3. Գլ. Է. 4.

Յամ Տեառն
60

ւ Գլ· ժգ· 4։
ի Գլ· ժա· 1. 16, 17։
ծ Գլ· ժա· 5։ Գաղ· բ· 6, 7· 8։
կ ա Կոր· գ· 7։ ժե· 8, 9։ Եփե· գ· 8։
հ Հռով· ժե· 18, 19։ ա Կոր· թ· 2։ Գլ· դ· 2։ զ· 4։ ժա· 6։
ձ ա Կոր· ա· 7։
ղ ա Կոր· թ· 12։ Գլ· ժա· 9։
ճ Գլ· ժա· 7։
մ Գլ· ժգ· 1։
յ Գոր· ի· 33։ ա Կոր· ժ· 33։
ն ա Կոր· դ· 14, 15։
շ ա Թես· բ· 8։ Փիլ· բ· 17։
ո Յոհ· ժ· 11։ Գլ· ա· 6։ Կող· ա· 24։ բ Տիմ· բ· 10։
չ Գլ· զ· 12, 13։
պ Գլ· ժա· 9։
ջ Գլ· է· 2։
ռ Գլ· ը· 6, 16, 22։
ս Գլ· ը· 18։
վ Գլ· ե· 12։
տ Հռով· թ· 1։ Գլ· ժա· 31։
ր ա Կոր· ժ· 33։
ց ա Կոր· դ· 21։ Գլ· ժ· 2։ ժգ· 2, 10։
ւ Գլ· ր· 1, 4։
փ Գլ· ժգ· 2։

ներու, հալածանքներու, ու նե-
ղութիւններու՝ Քրիստոսի համար.
ւ ինչու որ երբոր կը տկարանամ,
11 ան ատենը զօրաւոր եմ ։ ի Ես ան-
միտ եղայ պարծենալով, որ դուք
ստիպեցիք զիս. վասն զի ինծի
պէտք էր ձեզմէ վկայութիւն առ-
նել. ծ քանզի ես երևելի առա-
քեալներէն բանով մը պակաս
չգտնուեցայ, կ թէև ես ոչինչ եմ ։
12 հ Ցիրաւի ձեր մէջը առաքեալի
նշաններ գործուեցան ամէն համ-
բերութիւնով, նշաններով, և
սքանչելիքներով, ու զօրութիւն-
13 ներով ։ ձ Վասն զի ալ ի՞նչ կայ,
որ անով պակաս գտնուեցաք ուրիշ
եկեղեցիներէն, միայն թէ անով՝
ղ որ ես ձեզի ծանրութիւն չտուի.
ճ ներեցէք ինծի այս յանցանքը ։
14 մ Ահա աս երրորդ անգամ է՛ որ կը
պատրաստուիմ ձեզի գալու. և ես
ձեզի ծանրութիւն պիտի չտամ.
յ ինչու որ ես ձեր ունեցածը չեմ
փնտռեր, հապա՝ ձեզ. ն որովհետև
որդիները պարտաւոր չեն ծնողք-
ներուն համար բան դիզել, հապա
ծնողքները՝ որդիներուն համար ։
15 շ Ես ես մեծ յօժարութեամբ ծախք
պիտի ընեմ, ու ծախք պիտի ըլ-
լամ ալ ո ձեր անձերուն համար,
չ թէպէտև ձեզ աւելի սիրելով
պակաս քիչ սիրուիմ ալ ։
16 Սակայն թող ըլլայ որ պ ես ձեզի
ծանրութիւն մը չտուի, բայց
խորամանկ ըլլալով ըսեն թէ խորագէտ ըլլա-
լով նենգութեամբ ձեզ բռնեցի ։
17 ջ Միթէ իմ ձեզի խրկածներուս
մէկուն ձեռքովը ձեզմէ բան մը
18 քաշեցի՞ ։ ռ Տիտոսին աղաչեցի,
ս ու անոր հետը ան եղբայրը խըր-
կեցի. միթէ Տիտոս ձեզմէ բան մը
քաշե՞ց. չէ՞ որ երկուքնիս ալ նոյն
հոգիով քալեցինք, չէ՞ որ նոյն
ճամբով գացինք ։
19 վ Դարձեալ կը կարծէք որ ձեր
առջին ջատագովութի՞ւն կ'ընենք
մեր անձերուն. տ Աստուծոյ առջևը
Քրիստոսով կը խօսինք. ր և ամէն
բան սիրելիք՝ ձեր շինութեանը հա-
20 մար է. Քանզի կը վախնամ՝ որ
չըլլայ թէ երբոր գամ, ձեզ ու-
զածիս պէս չգտնեմ, ց և ես ալ ձե-
զի ձեր չուզածին պէս գտնուիմ.
չըլլայ թէ ձեր մէջը կռիւներ վէճեր,
նախանձներ, սրտմտութիւններ,
գրգռութիւններ, չարախօսու-
թիւններ, բանսարկութիւններ,
ամբարտաւանութիւններ, խռո-
21 վութիւններ. Չըլլայ թէ երբոր
նորէն գամ՝ ւ իմ Աստուածս զիս
նկուն ընէ ձեր քովը, ու սուգ ընեմ
շատերուն համար՝ փ որ՝ առաջուց
մեղք գործեցին, ու չապաշխարեցին
իրենց գործած պղծութեանը՝ և
պոռնկութեանը ու գիճութեանը
վրայ ։

## ԳԼ· ԺԳ

1 Կը ծանուցանէ թէ ինքը անաչառ պիտի ըլլայ. և իր առաքելական իշխանութիւնը պիտի բանեցընէ յամառեալ մեղաւորներուն դէմ. 5 և յորդորելով որ իրենց հաւատքը փորձեն, 7 ու իրենց մեղքերէն դառնան՝ դեռ ինքը անոնց չգացած, 11 իր թուղթը կը վերջացընէ ընդհանուր յորդորանքով մը ու աղօթքով ։

1 ա Աս երրորդ անգամ է որ ձեզի
կու գամ. բ երկու կամ իրեք
վկաներու բերնէ պիտի հաստատուի
2 ամէն բան ։ գ Առաջուց ըսեր եմ՝ և
նորէն առաջուց կը զրուցեմ (որ-
պէս թէ երկրորդ անգամ ներկայ
կը գտնուիմ՝ թէև հիմա հեռուէն
կը գրեմ) դ առջի մեղանչողներուն՝ և
ուրիշ ամենուն, որ եթէ նորէն
3 գամ՝ ե պիտի չխնայեմ. Որովհետև
զ Քրիստոսի ինծմով խօսելուն ա-
պացոյցը կը փնտռէք, որ ինքը ձեր
վրայ տկարացած չէ, է հապա ձեր
4 մէջը զօրացած է. ը Որ թէպէտ խա-
չուեցաւ տկարութիւնով, թ բայց
կենդանի է Աստուծոյ զօրութեամ-
բը. ժ քանզի մենք ալ թէպէտ կը
տկարանանք անով, բայց կենդանի
պիտի ըլլանք անոր հետ Աստուծոյ
5 զօրութեամբը ձեր մէջը ։ ի Փոր-
ձեցէ՛ք ձեր անձերը թէ հաւատքին
մէջն էք. քննեցէ՛ք ձեր անձերը.
չէ՞ք գիտեր ինքզինքնիդ, լ որ Յի-
սուս Քրիստոս ձեր մէջն է, խ միայն
6 թէ որ խոտելի չըլլաք ։ Բայց կը
յուսամ որ պիտի գիտնաք թէ
7 մենք խոտելի չենք ։ Եւ կը խնդրեմ
Աստուծմէ որ դուք մէկ չարութիւն
մը չընէք. չէ՛ թէ որ մենք ընտիր
երևինք. հապա որ դուք բարին
գործէք, ծ թէև մենք իբրև խոտելի
8 ըլլանք ։ Ինչու որ ճշմարտութեան
դէմ կարողութիւն մը չունինք,
հապա ճշմարտութեան համար ։
9 Ուրախ ենք՝ կ երբոր մենք կը տկա-
րանանք, ու դուք զօրաւոր կ'ըլլաք.
հ և մենք ալ աս ձեր հաստատու-
10 թեանը համար կ'աղօթենք ։ ձ Ասոր
համար աս կը գրեմ ձեզի հեռուէն, որ
չըլլայ թէ երբոր գամ՝ ղ սաստկու-
թեամբ վարուիմ ճ ան իշխանու-
թեանը համեմատ, որ Տէրը ինծի
տուաւ շինելու՝ ու չէ թէ քակելու
համար ։
11 Այսուհետև եղբայրներ՝ ողջ ե-
ղէք, հաստատ կեցէք, մխիթարուե-
ցէք, մ միաբան եղէք, խաղաղու-
թիւն ըրէք. յ և սիրոյ ու խաղա-
ղութեան Աստուածը ձեր հետը
12 պիտի ըլլայ ։ ն Բարև՛ տուէք իրա-
րու սուրբ համբուրով. բարև կ'ը-
13 նեն ձեզի բոլոր սուրբերը ։ շ Տէր

Յամ Տեառն
60

փ ա Կոր· ե· 1։

ա Գլ· ժբ· 14։
բ Թու· լե· 30։ բ Օր· ժէ· 6։ ժթ· 15։ Մատ· ժը· 16։ Յոհ· ը· 17։ Եբր· ժ· 28։
գ Գլ· ժ· 2։
դ Գլ· ժբ· 21։
ե Գլ· ա· 23։
զ Մատ· ժ· 20։ ա Կոր· ե· 4։ Գլ· բ· 10։
է ա Կոր· թ· 2։
ը Փիլ· բ· 7, 8։ ա Պետ· գ· 18։
թ Հռով· զ· 4։
ժ Տես Գլ· ժ· 3, 4։
ի ա Կոր· ժա· 28։
լ Հռով· ը· 10։ Գաղ· դ· 19։
խ ա Կոր· թ· 27։
ծ Գլ· զ· 9։
կ ա Կոր· գ· 10։ Գլ· ժա· 30։ ժբ· 5, 9, 10։
հ ա Թես· գ· 10։
ձ ա Կոր· դ· 21։ Գլ· բ· 3։ ժ· 2։ ժբ· 20, 21։
ղ Տիտ· ա· 13։
ճ Գլ· ժ· 8։
մ Հռով· ժբ· 16, 18։ ժե· 5։ ա Կոր· ա· 10։ Փիլ· բ· 2։ գ· 16։ ա Պետ· գ· 8։
յ Հռով· ժե· 33։
ն Հռով· ժզ· 16։ ա Կոր· ժզ· 20։ ա Թես· ե· 26։ ա Պետ· ե· 14։
շ Հռով· ժզ· 24։

Յամի Տեառն 60

Փիլ. բ. 1։

Յիսուս Քրիստոսի շնորհքը՝ և Աստուծոյ սէրը՝ ու Հոգւոյն Սրբոյ հաղորդութիւնը ձեր ամենուն հետը ըլլայ. ամէն։

Յամի Տեառն 60

---

ԹՈՒՂԹ

# ՊՕՂՈՍԻ ԱՌԱՔԵԼՈՅՆ

## ԱՌ ԳԱՂԱՏԱՑԻՍ

---

Յամի Տեառն 58

Հռմ 11. 12։ Գործ. թ. 7։ իբ. 10։ 15։ 21։ իզ. 16։ Տիտ. ա. 3։ Գործ. բ. 24։ Փիլ. բ. 22։ դ. 22։ ա Կոր. ժզ. 1։ Հռով. ա. 7։ ա Կոր. ա. 3։ բ Կոր. ա. 2։ Եփե. ա. 2։ Փիլ. ա. 2։ Կող. ա. 3։ ա Թես. ա. 2։ բ Թես. բ. 2. բ Յօհ. 3։ Մատ. ի. 28։ Հռով. դ. 25։ Գղ. բ. 20։ Տիտ. բ. 14։ Տես Եսա. կե. 17։ Յօհ. ժե. 19։ ժէ. 14։ Եբր. բ. 5։ զ. 5։ ա Յօհ. ե. 19։ Գղ. ե. 8։ բ Կոր. ժա. 4։ Գործ. ժե. 1։ 24։ բ Կոր. բ. 17։ ժա. 13։ Գղ. ե. 10, 12։ ա Կոր. ժզ. 22։ բ Օր. դ. 2։ ժբ. 32։ Առակ. լ. 6։ Յայտ. իբ. 18։ ա Թես. բ. 4։ ա Թագ. իդ. 7։ Մատ. իբ. 14։ ա Յօհ. դ. 9։ ա Թես. բ. 4։ Յակ. դ. 4։

### ԳԼՈՒԽ Ա

6 Առաքեալը կը զարմանայ որ Գաղատացիք այնքան շուտով թող տուին զինքը, ու իր քարոզած աւետարանը, 8 և կը նզովէ ան մարդիկը որ իր քարոզած աւետարանէն զատ՝ ուրիշ աւետարան մը կը քարոզեն. 11 կը ցուցնէ թէ ինքը չէ՛ թէ մարդոցմէ, այլ Աստուծմէ սորված է աւետարանը. 14 թէ ինքը ինչ էր իր կոչումէն առաջ, 17 և թէ ինչ ըրաւ անմիջապէս ետքը։

1 Պօղոս առաքեալ եղած՝ ոչ՛ թէ
մարդոցմէ, ու չէ՛ թէ մարդու
ձեռքով, հապա Յիսուս Քրիստո-
սի ձեռքովը, և Հօր Աստուծոյ՝
որ զանիկայ մեռելներէն յարոյց,
2 Եւ բոլոր եղբայրները որ իմ հետս
են՝ Գաղատիոյ եկեղեցիներուդ.
3 Շնորհք և խաղաղութիւն ձեզի
Հօր Աստուծմէ ու մեր Տէր Յի-
4 սուս Քրիստոսէն. Ան որ իր անձը
տուաւ մեր մեղքերուն համար, որ
մեզ փրկէ հիմակուան չար աշխար-
հէն՝ Աստուծոյ ու մեր Հօրը կա-
5 մացը համեմատ. Որուն փառք
յաւիտեանս յաւիտենից. ամէն։
6 Կը զարմանամ որ այդպէս շու-
տով ուրիշ աւետարանի կը փո-
խուիք անկէ՝ որ ձեզ Քրիստոսի
7 շնորհացը կանչեց. Որ չկայ ուրիշ
աւետարան. միայն թէ կան ո-
մանք՝ որ ձեզ կը խռովեցնեն,
ու կ'ուզեն Քրիստոսի աւետարանը
8 խանգարել։ Բայց թէ որ մենք՝
կամ երկինքէն հրեշտակ մը
աւետարանէ ձեզի անկէ ուրիշ՝ որ
մենք աւետարանեցինք ձեզի, նզո-
9 վեա՛լ ըլլայ։ Ինչպէս որ առաջ
ըսինք, հիմա ալ նորէն կ'ըսեմ.
Թէ որ մէկը ձեր ընդունածէն ու-
րիշ աւետարան քարոզելու ըլլայ
10 ձեզի, նզովեա՛լ ըլլայ։ Քանզի
հիմա մարդիկնե՞րը կը հաճեցնեմ՝
թէ զԱստուած. կամ մարդո՞ց
հաճելի ըլլալ կը փնտռեմ. ինչու
որ եթէ ես տակաւին մարդոց հա-
ճելի ըլլայի, ալ Քրիստոսի ծա-
ռայ չէի ըլլար։
11 Կը ծանուցանեմ ձեզի եղբայր-
ներ այն աւետարանը՝ որ ինծմէ
քարոզուեցաւ, թէ անիկայ մար-
12 դու բան չէ. Որովհետեւ ես ալ
մարդէ չառի անիկայ, և ոչ մէ-
կէն սորվեցայ, հապա Յիսուս Քր-
13 իստոսի յայտնութենէն։ Վասն
զի լսած էք դուք իմ առջի ժա-
մանակի վարմունքս Հրէութեան
մէջ, ինտոր չափէ դուրս կը հա-
լածէի Աստուծոյ եկեղեցին՝ ու
14 կը կործանէի զանիկայ. Եւ իմ
հայրենի աւանդութիւններուս
խիստ նախանձաւոր ըլլալով՝ իմ
ազգիս մէջ եղած շատ հասակակից-
ներէս աւելի յառաջադէմ էի Հր-
15 էութեան մէջ։ Բայց երբոր
ուզեց Աստուած՝ (որ որոշեց զիս
իմ մօրս որովայնէն, և իր շնորհ-
16 քովը կանչեց,) Ինծի իր
Որդին յայտնել, որ զանիկայ
հեթանոսաց մէջ քարոզեմ, մէկէն
'ի մէկ բան մը չիմացուցի մարմի-
17 նին ու արիւնին, Ո՛չ ալ Երու-
սաղէմ ելայ՝ ինծմէ առաջ առա-
քեալ եղողներուն քովը, հապա
Արաբիա գացի, ու նորէն Դամաս-
18 կոս դարձայ. Ետքը իրեք տարիէն
ետեւ Երուսաղէմ ելայ՝ Պետրոսը
տեսնելու, և տասնուհինգ օր անոր
19 քովը կեցայ. Սակայն առաքեալ-
ներէն ուրիշ մէկը չտեսայ, բայց
միայն Յակոբոս՝ Տէրոջը եղբայրը։
20 Բայց աս որ կը գրեմ ձեզի՝ ահա
Աստուծոյ առջեւը (կը հաստատեմ), որ
21 սուտ չեմ զրուցեր։ Անկէ ետքը
եկայ Սուրիայի ու Կիլիկիայի կող-
22 մերը։ Եւ զիս դէմ առ դէմ
չէին ճանչնար այն եկեղեցիները՝
որ Հրէաստանի մէջ էին Քրիս-
23 տոսով։ Միայն թէ անոնք լսած
էին թէ, Ան որ ատենօք մեզ կը
հալածէր, հիմա ինքը այն հաւատ-
քը կը քարոզէ՝ որ ատեն մը կը
24 կործանէր. Ու ինծմով զԱստուած
կը փառաւորէին։

Յամի Տեառն 58

ա Կոր. ժե. 1։ ա Կոր. ժե. 1, 3։ Հռմ 1։ Եփե. գ. 3։ Գործ. թ. 1։ իբ. 4։ իզ. 11։ ա Տիմ. ա. 13։ Գործ. ը. 3։ Երեմ. թ. 14։ Մատ. ժե. 2։ Մար. է. 5։ Գործ. իբ. 3։ իզ. 9։ Փիլ. գ. 6։ Յա. Տ. 35 Ես. խթ. 1, 5։ Երեմ. ա. 5։ Գործ. թ. 15։ ժգ. 2։ իբ. 14, 15։ Հռով. ա. 1։ բ Կոր. դ. 6։ * կամ ինծմով Գործ. թ. 15։ իբ. 21։ իզ. 17, 18։ Հռով. ժա. 13։ Եփե. գ. 8։ Յա. Տ. 38 Մատ. ժզ. 17։ ա Կոր. ժե. 50։ Եփե. զ. 12։ Գործ. թ. 26։ ա Կոր. թ. 5։ Մատ. ժգ. 55։ Մար. զ. 3։ Հռով. թ. 1։ Գործ. թ. 30։ ա Թես. բ. 14։ Հռով. ժզ. 7։

Յամի Տեառն 58

## ԳԼ. Բ

1 Առաքեալը կը ծանուցանէ թէ ճրբ ինքը վերստին Երուսաղէմ ելաւ՝ և ինչ նպատակով, 3 թէ Տիտոս չթլփատուեցաւ, 11 թէ ինքը Պետրոսին դէմ կեցաւ, պատճառը անոր իմացընելով 14 թէ ինչո՞ւ ինքը և ուրիշ Հրեաները Քրիստոսի կը հաւատան՝ որ հաւատքով արդարանան, և չէ թէ գործքով. 20 կը հաստատէ թէ մեղքի մէջ պիտի չմնան անոնք՝ որ այսպէս արդարացած են ։

1 Ետքը տասնուչորս տարիէն ետև
ա նորէն Երուսաղէմ ելայ Բառ-
նաբասին հետ՝ Տիտոսն ալ մէկ-
2 տեղ առնելով ։ Ու ելայ յայտ-
նութիւնով, բ և անոնց իմացուցի
ան աւետարանը՝ որ հեթանոսնե-
րուն մէջ կը քարոզեմ, բայց ա-
ռանձին անոնց՝ որ երևելիներ էին,
գ որ չըլլայ թէ պարապ տեղը վա-
3 զեմ կամ վազած ըլլամ ։ Բայց
չէ՛ թէ իմ հետս եղող Տիտոսն ալ՝
որ Յոյն էր, պարտաւորեցաւ թլ-
4 փատուիլ ․ դ Մանաւանդ ներս
սպրդուող սուտ եղբայրներուն համար՝ որոնք սահելով ներս մտան
ե Քրիստոս Յիսուսով մեր ունեցած
ազատութիւնը լրտեսելու համար,
5 զ որ մեզ ծառայեցընեն ․ Որ անոնց
քիչ մը ատեն անգամ մտիկ չըրինք
հնազանդելու, է որ աւետարանին
ճշմարտութիւնը հաստատուն մնայ
6 ձեր մէջը ։ ը Բայց անոնք որ կը
կարծուէին բան մը ըլլալ, որոնք
ինչ որ էին՝ ան իմ հոգս չէ ․ թ Աս-
տուած մարդոց աչառութիւն չըն-
ներ ․ ժ վասն զի անոնք կարծուած-
ները բան մը չիմացուցին ինծի ։
7 Հապա անոր հակառակը՝ ի երբոր
տեսան որ անթլփատներուն աւե-
տարանը լ ինծի յանձնուած է,
ինչպէս Պետրոսին ալ թլփա-
8 տուածներունը ․ (Վասն զի ան որ
Պետրոսին յաջողեց թլփատուած-
ներուն առաքելութիւն ընելու,
խ ինծի ալ ծ յաջողեց հեթանոսնե-
9 րունը ․) կ Ու երբոր ինծի տրուած
շնորհքը գիտցան Յակոբոս ու Կե-
փաս և Յովհաննէս՝ հ որոնք սիւներ
սեպուած էին, աջ ձեռքերնին
տուին ինծի ու Բառնաբասին 'ի
նշան հաղորդակցութեան, որ մենք
հեթանոսներուն մէջը երթանք, ու
10 անոնք՝ թլփատուածներուն ․ Միայն
թէ ձ կը խնդրէին որ աղքատները յի-
շենք ․ ղ որ ես ալ յօժարեցայ ան
11 բանը ընելու ։ ճ Բայց երբոր Կե-
փասը Անտիոք եկաւ, ես անոր դէմ
կեցայ ․ որովհետև ինքը մեղադրուե-
12 լու էր ։ Ինչու որ դեռ Յակոբոսին
քովէն մէկ քանի հոգի չեկած, մ ին-
քը հեթանոսներուն հետ անխտրո-
բար կ՚ուտէր ․ բայց երբոր եկան՝
մէկդի կը քաշուէր, ու ինքզինքը
կը զատէր, վախնալով անոնցմէ՝
13 որ թլփատուածներէն էին ։ Եւ ա-
նոր հետ կեղծաւորեցան մէկալ Հը-
րեաներն ալ, անանկ որ Բառնա-
բասն ալ անոնց կեղծաւորութեա-
14 նը ծռեցաւ ։ Բայց ես երբոր տե-
սայ յ որ աւետարանին ճշմարտու-
թեանը մէջ շիտակ չեն քալեր,
ն ամենուն առջին Կեփասին զրուցե-
ցի, շ Եթէ դուն որ Հրեայ ես, հե-
թանոսի պէս՝ ու չէ՛ թէ Հրեայի
պէս կ՚ապրիս, ի՞նչպէս հեթանոս-
ները կը ստիպես Հրեայի պէս վա-
15 րուելու ։ ո Մենք որ բուն Հրեայ
ենք, չ և չէ՛ թէ հեթանոսներէն
16 մեղաւորներ, պ Աս գիտնալով՝ որ
մարդ օրէնքին գործքերէն չկրնար
արդարանալ, ջ հապա Յիսուս Քը-
րիստոսի հաւատքէն, մենք ալ Քը-
րիստոս Յիսուսի հաւատացինք՝ որ
արդարանանք Քրիստոսի հաւատ-
քէն, և չէ՛ թէ օրէնքին գործքե-
րէն, ռ որովհետև օրէնքին գործքե-
րէն մէկ մարմին մը պիտի չարդարա-
17 նայ ։ Իսկ եթէ մենք՝ որ կ՚ուզենք
Քրիստոսով արդարանալ, ս մեղա-
ւոր գտնուինք, ուրեմն Քրիստոս
մեղաց պաշտօնեա՞յ եղաւ ․ քաւ լի-
18 ցի ։ Քանզի թէ որ ես իմ քակած
բաներս նորէն կը շինեմ, իմ անձս
19 յանցաւոր կը ցուցընեմ ։ վ Ինչու
որ ես օրէնքով տ մեռայ օրէնքին,
ր որ Աստուծոյ կենդանի ըլլամ ։
20 ց Քրիստոսի հետ խաչը ելայ ․ Բայց
կենդանի եմ, չէ՛ թէ ես՝ հապա
Քրիստոս կենդանի է իմ մէջս ․
բայց ես որ հիմա մարմինովս կ՚ապ-
րիմ՝ ւ Աստուծոյ Որդւոյն հաւատ-
քովը կ՚ապրիմ, փ ան որ զիս սիրեց,
ու իր անձը ինծի համար մատնեց ։
21 Ես Աստուծոյ շնորհքը չեմ անար-
գեր ․ ք ինչու որ եթէ արդարու-
թիւնը օրէնքէն էր, ուրեմն Քրիս-
տոս պարապ տեղը մեռաւ ։

## ԳԼ. Գ

1 Կը հարցընէ թէ ի՞նչ պատճառով հաւատքը կը թողուն և օրէնքին կը դառնան ․ 6 կը ցուցընէ թէ անոնք որ կը հաւատան՝ կ՚արդարանան, 9 և կ՚օրհնուին Աբրահամին հետ ․ 10 ու շատ փաստերով կը հաստատէ ասիկայ ։

1 Ո՛վ անմիտ Գաղատացիք՝ ա ո՞վ
ձեզ հրապուրեց* ․ որ ձեր աչ-
քերուն առջևը Յիսուս Քրիստոս
ձեր մէջը խաչը ելած նկարագրուե-
2 ցաւ ։ Ասիկայ միայն կ՚ուզեմ ձեզ-
մէ սորվիլ ․ բ Օրէնքի՞ն գործքե-
րովը դուք Հոգին առիք՝ գ թէ հա-
3 ւատքին լսելովը ։ Այդչափ ան-
մի՞տ էք ․ դ Հոգիով սկսեցիք, ե ու
հիմա մարմինո՞վ կը վերջանաք ։
4 զ Այնչափ դիպուածները պարա՞պ
տեղը ձեր վրայէն անցան, (թէ որ
5 պարապ ըլլայ ալ ։) է Ուստի ան
որ ձեզի Հոգին բաշխեց, և ձեր մէ-

Յա. Տ. 52
ա Գործ. ժե. 2 ։
բ Գործ. ժե. 12 ։
գ Փիլ. բ. 16 ։ ա Թես. գ. 5 ։
դ Գործ. ժե. 1, 24 ։ բ Կոր. ժա. 26 ։
ե Գղ. գ. 25 ։ ե. 1, 13 ։
զ բ Կոր. ժա. 20 ։ Գղ. դ. 3, 9 ։
է Հմր 14 ։ Գղ. գ. 1 ։ դ. 16 ։
ը Գղ. զ. 3 ։
թ Գործ. ժ. 34 ։ Հռով. բ. 11 ։
ժ բ Կոր. ժբ. 11 ։
ի Գործ. ժգ. 46 ։ Հռով. ա. 5 ։ ժա. 13 ։ ա Տիմ. բ. 7 ։ բ Տիմ. ա. 11 ։
լ ա Թես. բ. 4 ։
խ Գործ. թ. 15 ։ ժգ. 2 ։ իբ. 21 ։ իզ. 17, 18 ։ ա Կոր. ժե. 10 ։ Գղ. ա. 16 ։ Կող. ա. 29 ։
ծ Գղ. գ. 5 ։
կ Հռով. ա. 5 ։ ժբ. 3, 6 ։ ժե. 15 ։ ա Կոր. ժե. 10 ։ Եփե. գ. 8 ։
հ Մատ. ժզ. 18 ։ Եփե. բ. 20 ։ Յայտն. իա. 14 ։
ձ Գործ. ժա. 30 ։ իդ. 17 ։ Հռով. ժե. 25 ։ ա Կոր. ժզ. 1 ։ բ Կոր. ը. թ ։
ղ Գործ. ժե. 35 ։
ճ Գործ. ժ. 28 ։ ժա. 3 ։

Յամի Տեառն 58
մ Հմր 5 ։
յ ա Տիմ. ե. 20 ։
ն Գործ. ժ. 28 ։ ժա. 3 ։
շ Գործ. ժե. 10, 11 ։
ո Մատ. թ. 11 ։ Եփե. բ. 3, 12 ։
չ Գործ. ժգ. 38, 39 ։
պ Հռով. ա. 17 ։ գ. 22 ։ 28 ։ ը. 3 ։ Գղ. գ. 24 ։ Եբր. է. 18, 19 ։
ջ Սաղ. ճխգ. 2 ։ Հռով. գ. 20 ։ Գղ. գ. 11 ։
ռ ա Յոհ. գ. 8, 9 ։
ս Հռով. ը. 2 ։
վ Հռով. զ. 14 ։ է. 4, 6 ։
տ Հռով. զ. 11 ։ բ Կոր. ե. 15 ։ ա Թես. ե. 10 ։ Եբր. թ. 14 ։ ա Պետ. դ. 2 ։
ր Հռով. զ. 6 ։ Գղ. ե. 24 ։ զ. 14 ։
ց բ Կոր. ե. 15 ։ ա Թես. ե. 10 ։ ա Պետ. դ. 2 ։
ւ Գղ. ա. 4 ։ Եփե. ե. 2 ։ Տիտ. բ. 14 ։
փ Գղ. գ. 21 ։ Եբր. է. 11 ։
ք Տես Հռով. ժա. 6 ։ Գղ. ե. 4 ։

ա Գղ. ե. 7 ։
* Որմէ կ՚ախուցընէին ճշմարտութեանը չհնազանդելու ։
բ Գործ. բ. 38 ։ ը. 15 ։ ժ. 47 ։ ժե. 8 ։ Հմր 14 ։ Եփե. ա. 13 ։ Եբր. զ. 4 ։
գ Հռով. ժ. 16, 17 ։
դ Գղ. դ. 9 ։
ե Եբր. է. 16 ։ թ. 10 ։
զ Եբր. ժ. 35, 36 ։ բ Յոհ. 8 ։
է բ Կոր. գ. 8 ։

Յամ Տեառն
64

ղՅօհ. ժե. Տ: Եփե. ա. 12. 14.
ճԳղ. դ. 23.
մԳղ. բ. 8.
յՀմր 7.
ն բ Կոր. ա. 11.
շՀռով. ը. 9.
ոՀռով. ը. 19.
չՀռով. ե. 5.
պԵփե. գ. 19. 20.
ջբ Կոր. ե. 8.
ռբ Տիմ. դ. 6.
սԳղ. բ. 24.
վբ Կոր. ա. 14. ե. 12.
տԵփե. դ. 1. Կող. ա. 10. ա Թեսա. բ. 12. դ. 1.

ներով լցուած Յիսուս Քրիստոսի
ձեռքովը՝ ղԱստուծոյ փառքին ու
գովեստին համար ։
12 Կ՚ուզեմ որ գիտնաք՝ եղբայրներ,
թէ ինչ որ ինծի պատահեցաւ՝ աւելի
աւետարանին յառաջադի-
13 մութեանը պատճառ եղաւ. Մին-
չև իմ կապերս՝ որ Քրիստոսի համար
են, ճբոլոր պալատին մէջը՝ և ու-
րիշ ամենուն ալ յայտնի եղան.
14 Եւ Տէրոջմով եղբայրներուն շատե-
րը սիրտ առին իմ կապերէս՝ աւ
աւելի համարձակիլ Աստուծոյ խօս-
15 քը խօսելու առանց վախի ։ Ոմանք
նախանձէ մու հակառակութենէ,
և ոմանք բարեսիրութենէ Քրիստո-
16 սը կը քարոզեն. Ասոնք
սիրոյ համար. ինչու որ գիտեն թէ
ես աւետարանին համար պատաս-
17 խան տալու կեցեր եմ. Իսկ անոնք
հակառակութեան համար Քրիս-
տոսը կը պատմեն, չէ թէ անկեղ-
ծութեամբ, յկարծելով վիշտ աւել-
18 ցընել իմ կապերուս վրայ ։ Բայց
ի՞նչ է. որ կերպով որ ըլլայ՝ թէ
պատճառանքով՝ և թէ ճշմարտու-
թիւնով՝ Քրիստոս կը պատմուի.
ու ասոր վրայ ուրախ եմ, և ուրախ
19 ալ պիտի ըլլամ ։ Քանզի գիտեմ
որ ասոր վախճանը իմ փրկութեանս
համար պիտի ըլլայ նձեր խընդ-
րուածքովը, շու Յիսուս Քրիստո-
սի Հոգւոյն օգնականութեամբը,
20 ոիմ եռանդուն ակնկալութեանս
ու իմ յոյսիս համեմատ, չոր բա-
նով մը ամօթով պիտի չըլլամ.
պհապա կատարեալ համարձակու-
թիւնով՝ ինչպէս որ ամէնատեն՝
անանկ ալ հիմա Քրիստոս իմ մար-
մինիս մէջ պիտի փառաւորուի՝ թէ
21 ապրելովս և թէ մեռնելովս ։ Ին-
չու որ ինծի համար՝ ապրիլը Քրիս-
22 տոս է, ու մեռնիլը օգուտ ։ Հա-
պա թէ որ մարմինի մէջ ապրիլս
իմ գործոյս պտուղ կը բերէ, ալ
23 չեմ գիտեր որը ընտրեմ ։ ջԵրկու
կողմանէ ալ նեղի մէջ եմ, ռմեկ-
նելու ու Քրիստոսի հետ ըլլալու
փափաք ունենալով. քանզի ան՝
24 շատ աւելի աղէկ է. Բայց մարմի-
նի մէջ կենալը՝ ձեզի համար աւելի
25 հարկաւոր ։ սԵւ աս բանիս հա-
մոզուած ըլլալով՝ գիտեմ որ ձեր
ամենուն հետը պիտի կենամ ու մը-
նամ, որ դուք զարգանաք և ուրախ
26 ըլլաք հաւատքով. վՈր ձեր պար-
ծանքը իմ վրայովս աւելի ըլլայ
Քրիստոս Յիսուսով, իմ նորէն
ձեզի գալուս պատճառովը ։
27 տՄիայն թէ Քրիստոսի աւետա-
րանին ինչպէս որ կը վայլէ՝ անանկ
վարուեցէք. որ եթէ գամ ու ձեզ
տեսնեմ, և կամ հեռու ըլլամ,
ձեր վրայովը լսեմ ւոր դուք հաս-
տատուն կը կենաք մէկ հոգիով.
յու մէկ շունչով փպատերազմակից
կ՚ըլլաք աւետարանին հաւատքին
28 համար. Եւ մէկ բանով մըն ալ մի
զարհուրիք հակառակորդներէն,
քոր անոնց կորստեան ապացոյց մըն
29 է, օու ձեզի՝ փրկութեան. Ան ալ
Աստուծմէ է. օինչու որ ձեզի տը-
րուեցաւ Քրիստոսի համար՝ ֆչէ
թէ միայն անոր հաւատալ, հապա
անոր համար չարչարուիլ ալ.
30 աՆոյն պատերազմը ունենալով՝
բոր իմ վրաս տեսաք, ու հիմա իմ
վրայովս կը լսէք ։

Յամ Տեառն
64

ւԳղ. դ. 1. փա Կոր. ա. 10. աՅուդ. 3. քբ Կոր. ա. 5. օՀռով. ը. 17. բ Տիմ. բ. 11. օԳոր. ե. 41. Հռով. ե. 3. ֆԵփե. բ. 3. աԿող. բ. 1. բԳոր. ժզ. 19. Ա Թես. բ. 2.

## ԳԼ. Բ

1 Կը խրատէ զանոնք միաբան և խոնարհամիտ ըլլալու, ցուցընելով անոնց՝ Քրիստոսի խոնարհութիւնը և բարձրութիւնը ։ 12 Կը յորդորէ որ ջանք ընեն փրկութեան ճամբուն մէջ յառաջանալու, որ լուսաւորներու պէս ըլլան աս չար աշխարհիս մէջ, 16 և մխիթարութիւն տան իրեն՝ որ անոնց առաքեալն է, ու պատրաստ կը կենայ Աստուծոյ զոհ ըլլալու ։ 19 Կը յուսայ որ Տիմոթէոսը խրկէ անոնց, որուն վրայով բարի վկայութիւն կու տայ. 25 Նմանապէս Եպափրոդիտոսին վրայով ալ՝ որն որ նոյն ատենը անոնց կը խրկէ ։

1 Ուստի թէ որ Քրիստոսով մխի-
թարութիւն մը կայ, թէ սիրոյ
սփոփանք մը, աթէ Հոգիին հաղոր-
դութիւն մը, բթէ գթութիւն ու
2 ողորմութիւն մը. գիմ ուրախու-
թիւնս դուք լեցուցէք, դնոյն խոր-
հուրդը ունեցէք, մի և նոյն սէրը
ունենալով, մէկ շունչ,
3 մէկ մտածմունք. եբան մը գըրգ-
ռութիւնով կամ սնապարծու-
թիւնով մի ընէք. զհապա խոնար-
հութիւնով մէկզմէկ ձեր անձէն լաւ
4 սեպեցէք. էՄինակ անձերնուդ շահը
մի նայիք. հապա ամէն մէկը իր
5 ընկերինն ալ ։ ըՁեզմէ ամէն մէկը
նոյն միտքը թող ունենայ, որ
6 Քրիստոս Յիսուսի մէջն էր. թՈր
Աստուծոյ կերպարանքը ունենալով,
ժ *յափշտակութիւն մը չսեպից
7 Աստուծոյ հաւասար ըլլալը. իՀա-
պա անձը ունայնացուց լծառայի
կերպարանք առնելով՝ խ մարդոց
նման ըլլալով. և կերպարանքովը
8 մարդու պէս գտնուելով, Ինքզինքը
խոնարհեցուց՝ ծմինչև մահուան
հնազանդ եղաւ, ու խաչին մա-
9 հուանը ։ կԱսոր համար Աստուած
ալ անիկայ խիստ բարձրացուց,
հու անոր անուն մը տուաւ՝ որ ա-
10 մէն անուններէն վեր է. ձՈր Յիսուսի
անունին ամէն ծունկ չոքի, երկնա-
ւորներուն, ու երկրաւորներուն,

ա բ Կոր. ժգ. 13. բ Կող. դ. 12. գ Յօհ. գ. 29. դ Հռով. ժբ. 16. ժե. 5. ա Կոր. ա. 10. բ Կոր. ժգ. 11. Գղ. ա. 27. գ. 16. դ. 2. ա Պետ. դ. 8. ե Գաղ. ե. 26. Գղ. ա. 15. 17. Յակ. գ. 14. զ Հռով. ժբ. 10. Եփե. ե. 21. ա Պետ. ե. 5. է ա Կոր. ժ. 24. 33. ժգ. 5. ը Մատ. ժա. 29. Յօհ. ժգ. 15. ա Պետ. բ. 21. ա Յօհ. բ. 6. թ Յօհ. ա. 1. 2. ժէ. 5. բ Կոր. դ. 4. Կող. ա. 15. Եբր. ա. 3. ժ Յօհ. ե. 18. ժ. 33. * Կամ յափշտակելու բան. ի Սաղ. իբ. 6. Եսա. ծգ. 3. Դան. թ. 26. Մար. թ. 11. Հռով. ժե. 3. լԵսա. խբ. 1. խթ. 3. 6. ծբ. 13. ծգ. 11. Եզեկ. լդ. 23. 24.

Զաք. գ. 8. Մատ. ի. 28. Ղուկ. իբ. 27. խ Յօհ. ա. 14. Հռով. ա. 3. ը. 3. Գաղ. դ. 4. Եբր. բ. 14. 17. ծ Մատ. իզ. 39. 42. Յօհ. ժ. 18. Եբր. ե. 8. ժբ. 2. կ Յօհ. ժէ. 1. 2. 5. Գոր. բ. 33. Եբր. բ. 9. հ Եփե. ա. 20. 21. Եբր. ա. 4. ձ Եսա. խե. 23. Մատ. իը. 18. Հռով. ժդ. 11. Յայտ. ե. 13.

Յամի Տեառն 64

11 և սանդարամետականներուն . Ու
ամէն լեզու դաւանի՝ թէ Յիսուս
Քրիստոս Տէր է՝ Հօր Աստուծոյ
12 փառքին համար ։ Ուստի իմ սի-
րելիներս՝ ինչպէս որ ամէն ատեն
հնազանդ եղաք՝ ոչ միայն իմ ներ-
կայութեանս , հապա ալ աւելի
հիմա՝ իմ բացակայութեանս ատե-
նը , վախով ու դողով անձերնուդ
13 փրկութիւնը գործեցէք . Ինչու
որ Աստուած է՝ որ ձեր մէջը կը
ներգործէ կամենալը ու ընելը իր
14 հաճութեանը համար ։ Ամէն բան
առանց տրտունջներու ու վիճա-
15 բանութիւններու ըրէք . Որ ըլլաք
ամբիծ ու անարատ՝ Աստուծոյ որ-
դիներ առանց մեղադրանքի՝ կա-
մակոր ու խոտորեալ ազգին մէջ ,
Որոնց մէջը դուք լուսաւորներու
16 պէս կը փայլիք աշխարհիս մէջ . Կե-
նաց խօսքը ամուր բռնելով՝ ինծի
պարծանք ըլլալու համար Քրիս-
տոսի օրը , Թէ պարապ տեղը չվա-
զեցի , և պարապ տեղը չաշխատե-
17 ցայ ։ Բայց թէպէտև ձեր հա-
ւատքին պատարագին ու պաշտօ-
նին վրայ ընծայուիմ , կ'ուրախա-
նամ և ձեր ամենուն հետը ուրա-
18 խակից կ'ըլլամ . Նոյնպէս ալ դուք
ուրախացէք ու իմ հետս ուրախա-
կից եղէք ։

19 Արդ՝ կը յուսամ Տէր Յիսու-
սով , որ Տիմոթէոսը շուտով ձեզի
խրկեմ , որ իմ սիրտս ալ հանգչի ,
20 երբոր ձեր վիճակը գիտնամ ։ Ին-
չու որ անոր նման սրտակից մէկը
չունիմ , որ մտերմաբար ձեզի հա-
21 մար հոգ տանի ։ Քանզի ամէնը
իրենցը կը փնտռեն , ու չէ թէ
22 Յիսուս Քրիստոսինը ։ Բայց դուք
անոր փորձը գիտէք , որ ինչպէս
որդի մը հօրը հետ՝ անանկ ինծի հետ
ծառայութիւն ըրաւ աւետարանին
23 մէջ ։ Ուստի կը յուսամ անիկայ
խրկել , շուտ մը իմ ինչպէս ըլլա-
24 լիքս ստուգածիս պէս ։ Բայց
վստահութիւն ունիմ Տէրոջմով՝
որ ես ալ քիչ ատենէն պիտի
25 գամ ։ Միայն թէ հարկաւոր սե-
պեցի հիմա ձեզի խրկել Եպափ-
րոդիտոս իմ եղբայրս և գործա-
կիցս ու զինուորակիցս՝ ձեր
խրկածը ու իմ պէտքիս ծառա-
26 յողը ։ Որովհետև ինքն ալ շատ
փափաք ունէր ձեր ամէնն ալ տես-
նելու . ու կը տրտմէր , որ դուք
լսած էիք թէ ինքը հիւանդացաւ ։
27 Եւ յիրաւի ինքը հիւանդացաւ մա-
հուան մօտ , բայց Աստուած ողոր-
մեցաւ անոր . չէ թէ մինակ անոր՝
հապա ինծի ալ , որ տրտմութեան
վրայ տրտմութիւն չունենամ ։
28 Ասոր համար աւելի փութով խրը-
կեցի որ դուք զանիկայ տեսնելով
նորէն ուրախ ըլլաք . ու ես առանց
29 տրտմութեան ըլլամ ։ Ուրեմն
ընդունեցէ՛ք անիկայ Տէրոջմով ա-
մէն ուրախութեամբ , ու անանկ-
ները պատուականներու կարգը
30 բռնեցէք . Քանզի Քրիստոսի գոր-
ծին համար մինչև մահուան մօտե-
ցաւ՝ իր կեանքը վտանգի մէջ ձը-
գելով , Որ ձեր ինծի ծառայելու
պակասութիւնը ինքը լեցընէ ։

## ԳԼ. Գ

1 Առաքեալը կը պատուիրէ որ հեռու կենան
թլփատութիւն քարոզող սուտ վարդապետ-
ներէն , 4 ցուցընելով թէ ինքը անոնցմէ աւե-
լի իրաւունք ունէր օրէնքին արդարութեամ-
բը պարծենալու , 7 բայց սակայն ինքը վնաս
և աղտեղութիւն կը համարի զան , որ Քրիս-
տոսը ու անոր արդարութիւնը շահի . 12 այ-
սու ամենայնիւ կը խոստովանի իր անկատա-
րութիւնը . 15 կը յորդորէ զանոնք իրեն պէս
խորհելու , 17 իրեն նմանող ըլլալու , 18 և
մարմնաւոր քրիստոնեաներուն չար ճամբա-
ներէն հեռու մնալու ։

1 Ուստի իմ եղբայրներս՝ ուրախ
եղէք Տէրոջմով . Նոյն բաները
ձեզի գրելը ինծի ձանձրութիւն չէ ,
2 ու ձեզի ապահովութիւն է ։ Զգու-
շացէ՛ք շուներէն . զգուշացէ՛ք
չար մշակներէն , զգուշացէ՛ք կըր-
3 ճատութենէն ։ Ինչու որ թլփա-
տութիւնը մենք ենք , Որ հոգիով
Աստուած կը պաշտենք , ու կը
պարծենանք Քրիստոս Յիսու-
սով , և մարմնի վրայ չենք պար-
4 ծենար ։ Թէպէտ ես ալ նոյն
վստահութիւնը ունիմ մարմնի
վրայ . Թէ որ ուրիշ մէկը կը կար-
ծէ թէ վստահութիւն ունի մար-
5 մնի վրայ , ալ աւելի ես . Ութ
օրուան թլփատուած , Իսրայէլի
ազգէն , Բենիամինի ցեղէն , Եբ-
րայեցի Եբրայեցիներէ , օրէնքին
6 նայելով փարիսեցի . Նախանձա-
ւոր ըլլալու կողմանէ՝ եկեղեցին
կը հալածէի , օրէնքին արդարու-
թեանը կողմանէ անարատ էի ,
7 Բայց ինչ որ ինծի շահ էր , անի-
կայ Քրիստոսի համար վնաս սեպե-
8 ցի ։ Եւ իրաւ բոլոր բաներն ալ
վնաս կը սեպեմ իմ Տէրոջս Քը-
րիստոս Յիսուսի գերազանց գի-
տութեանը համար . որուն համար
ամէն բանէն զրկուեցայ , և աղտե-
ղութիւն կը սեպեմ , որ Քրիստոսը
9 շահիմ , Ու իր մէջը գտնուիմ .
Չէ թէ իմ արդարութիւնս ունե-
նամ որ օրէնքէն է , հապա Քրիս-
տոսի հաւատքովը եղած արդա-
րութիւնը՝ որ Աստուծմէ է հա-
10 ւատքով . Ճանչնալու անիկայ՝ և
անոր յարութեանը զօրութիւնը՝
ու անոր չարչարանքներուն հա-
ղորդ ըլլալը , անոր մահուան կեր-
11 պարանքը առնելով . Որ ըլլայ

թէ մեռելներուն յարութեանը
12 հասնիմ ։ Ոչ թէ ես արդէն
առեր եմ, կամ արդէն կատա֊
րեալ եղեր եմ, հապա ետեւէ են
կած եմ որ բռնեմ զայն, որուն
համար ալ բռնուեցայ Քրիստոս
13 Յիսուսէն ։ Եղբայրներ՝ ես չեմ
սեպեր որ բռներ եմ. բայց մէկ
բան մը կայ, որ ետեւի եղածները
մոռցած եմ, ու առջեւի եղածնե֊
14 րուն կը դիմեմ. նպատակը դի֊
տելով՝ Քրիստոս Յիսուսով եղած
Աստուծոյ վերին կոչմանը մրցա֊
15 նակին կը վազեմ ։ Ուստի մենք
ամէնքս՝ որ կատարեալ ենք, ա֊
սիկայ խորհինք, և թէ որ բան մը
ուրիշ կերպով խորհելու ըլլաք,
անիկայ ալ ձեզի պիտի յայտնէ
16 Աստուած ։ Միայն թէ՝ ինչ ա֊
ստիճանի որ հասեր ենք՝ նոյն կանո֊
նին համեմատ քալենք, նոյն խոր֊
17 հուրդը ունենանք ։ Ինծի նմա֊
նող եղէք՝ եղբայրներ ; ու նայե֊
ցէք անոնց որ այնպէս կը քալեն,
ինչպէս որ մեզ ունիք օրինակ ու֊
18 նիք ։ Ինչու որ շատերը կը քալեն,
որոնց համար շատ անգամ ձեզի
կ'ըսէի, և հիմա լալով ալ կը գը֊
րուցեմ, թէ անոնք Քրիստոսի խա֊
19 չին թշնամիներուն համար. Որ
անոնց վերջը կորուստ է. որոնց
աստուածը իրենց որովայնն է, ու
անոնց փառքը՝ իրենց ամօթն է.
որոնք միայն երկրաւոր բաները կը
20 մտածեն ։ Բայց մեր քաղաքա֊
կանութիւնը երկինքն է, ուսկից
Փրկիչը կը սպասենք՝ Տէր Յիսուս
21 Քրիստոսը. Որ պիտի նորոգէ մեր
խոնարհ մարմինը՝ իր փառաւոր
մարմինին կերպարանակից ըլլալու,
այն զօրութիւնովը՝ որ կարող է
ամէնը իր տակը հնազանդեցընե֊
լու ։

ԳԼ. Դ.

1 Մասնաւոր խրատներէն ետև՝ 4 ընդհանուր յորդորանքներ կ'ընէ. 10 ցուցընելով թէ ինչպէս ինքը ուրախացաւ անոնց առատաձեռնութեանը վրայ որ ցուցուցին իրեն՝ իր բանտարկուած ատենը, ո՛չ այնքան իր պիտոյքը լեցընելնուն համար, հապա անոնց մէջ եղած Աստուծոյ շնորհքին համար. 19 և այսպէս իր թուղթը կը վերջացընէ աղօթքով և բարևներով ։

1 Ուստի իմ սիրելի ու բաղձալի
եղբայրներս՝ իմ ուրախու֊
թիւնս ու պսակս, այսպէս հաս֊
տատուն կեցէք Տէրոջմով՝ սիրե֊
լիներս ։
2 Եւոդիային կ'աղաչեմ, ու Սիւն֊
տիքէին կ'աղաչեմ՝ որ մի և նոյն
խորհուրդը ունենան Տէրոջմով ։
3 Իրաւ քեզի ալ կ'աղաչեմ՝ իմ
հարազատ լծակիցս, դուն ալ օգ֊
նական եղիր անոնց, որոնք իմ
հետս աշխատեցան աւետարանին
մէջ Կղեմեսին՝ և իմ ուրիշ գոր֊
ծակիցներուս հետ, որոնց անուն֊
4 ները կենաց գրքին մէջն է ։ Ու֊
րախ եղէք Տէրոջմով ամէնատեն.
դարձեալ կ'ըսեմ՝ ուրախ եղէք ։
5 Ձեր քաղցրութիւնը ամէն մար֊
դոց թող յայտնի ըլլայ. Տէրը
6 մօտ է ։ Բանի մը համար հոգ մի՛
ընէք. հապա ամէն բանի մէջ ա֊
ղօթքով ու աղաչանքով, գոհու֊
թիւնով մէկտեղ ձեր խնդրուածքը
7 Աստուծոյ յայտնի ըլլայ ։ Եւ Աս֊
տուծոյ խաղաղութիւնը որ ամէն
միտքէ վեր է, ձեր սիրտերը ու միտ֊
քերը Քրիստոս Յիսուսով պիտի
8 պահպանէ ։ Այսուհետև եղբայր֊
ներ՝ ինչ որ ճշմարտութիւնով է,
ինչ որ պարկեշտութիւնով, ինչ
որ արդարութիւնով, ինչ որ
մաքրութիւնով, ինչ որ սիրով,
ինչ որ բարի համբաւով, ինչ
առաքինութիւն և ինչ գովու֊
թիւն որ կայ, ան բաները խոր֊
9 հեցէք ։ Ինչ որ սորվեցաք ու ա֊
ռիք՝ և լսեցիք ու տեսաք իմ վրաս,
ան ըրէք. և խաղաղութեան Աս֊
տուածը ձեր հետը պիտի ըլլայ ։
10 Մեծապէս ուրախացայ Տէրոջ֊
մով, որ իմ վրաս ունեցած հո֊
գերնիդ հիմա նորոգուեցաւ. ինչ֊
պէս որ կը հոգայիք ալ. միայն թէ
11 պատեհութիւն չունէիք ։ Չէ՛ թէ
կարօտութեան համար կ'ըսեմ.
ինչու որ ես սորվեցայ գոհ ըլլալ
12 իմ գտնուած վիճակիս մէջ ։ Գի֊
տեմ չքաւորութիւն քաշելը. գի֊
տեմ շատը ունենալը. ամէն բանի
մէջ ամէն կերպով աղէկ սորվեր եմ
թէ կշտանալը, թէ անօթենալը,
թէ շատ ունենալը, և թէ պակ֊
13 սութիւն քաշելը ։ Ամէն բանի
կարող եմ անով՝ որ զիս զօրա֊
14 ցուց ։ Բայց աղէկ ըրիք, որ իմ
նեղութեանս մէջ ինծի հաղորդ
15 եղաք ։ Դուք ալ գիտէք Փիլիպ֊
պեցիներ, որ աւետարանին սկիզբը
երբոր ես Մակեդոնիայէն ելայ,
մէկ եկեղեցի մըն ալ հետս հաղոր֊
դութիւն չըրաւ տալու և առնելու
16 կողմէ, հապա միայն դուք. Որ
Թեսաղոնիկէի մէջ ալ մէկ երկու
անգամ ինծի պէտք եղածը խրկե֊
17 ցիք ։ Չէ՛ թէ ես տուրք կը փընտ֊
ռեմ, հապա պտուղ կը փընտ֊
ռեմ՝ որ ձեր հաշիւին վրայ աւել֊
18 նայ ։ Բայց ես ամէն բան առած
եմ, ու առատօրէն ունիմ. լե֊
ցուած եմ՝ Եպափրոդիտոսին ձեռ֊
քովը ձեր խրկածները ընդունելով,
որ անուշ հոտ մըն է՝ ընդունելի
պատարագ՝ Աստուծոյ հաճելի ։

Յամփ Տեառն 64

Սաղ. իգ. 1. բ Կոր. թ. 8. Եփե. ա. 7. գ. 16. Հռով. ժզ. 27. Գաղ. ա. 5.

19 Եւ իմ Աստուածս ձեր ամէն պի-
տոյքը պիտի լեցնէ իր ճոխու-
թեանը չափովը՝ փառքով, Քրիս-
20 տոս Յիսուսի ձեռքովը։ Ալ Աս-
տուծոյ ու մեր Հօրը փառք յաւի-
տեանս յաւիտենից. ամէն։
21 Բարեւ՝ ըրէք բոլոր սուրբերուն՝
22 Քրիստոս Յիսուսով։ Ձեզի բա-
րեւ կ՚ընեն իմ հետս եղող եղբայր-
23 ները։ Ձեզի բարեւ կ՚ընեն բոլոր
սուրբերը, մանաւանդ անոնք՝ որ
24 կայսրին տունէն են։ Տէր Յի-
սուս Քրիստոսի շնորհքը ձեր ամե-
նուն հետը ըլլայ. ամէն։

Յամփ Տեառն 64

Գաղ. ա. 2. Գղ. ա. 13. Հռով. ժզ. 24.

ԹՈՒՂԹ

# ՊՕՂՈՍԻ ԱՌԱՔԵԼՈՅՆ

## ԱՌ ԿՈՂՈՍԱՑԻՍ

Յամփ Տեառն 64

Եփե. ա. 1. Կոր. գ. 17. Եփե. զ. 21. Գաղ. ա. 3. Ոմանք չունին. Կոր. ա. 4. Եփե ա. 16. Փիլ. ա. 3. դ. 6. Հմր 9. Եփե. ա. 15. Փիլմ. 5. Եբր. զ. 10. բ Տիմ. դ. 8. ա Պետ. ա. 4. Մատ. իդ. 14. Մար. ժզ. 15. Հռով. ժ. 18. Հմր 23. Մար. դ. 8. Յօհ. ժե. 16. Փիլ. ա. 11. բ Կոր. զ. 1. Եփե. դ. 2. Տիտ. բ. 11. ա Պետ. ե. 12. Գղ. դ. 12. Փիլմ. 23. բ Կոր. ժա. 23. ա Տիմ. դ. 6. Հռով. ժե. 30. Եփե. ա. 15. 16. Հմր 3. 4. ա Կոր. ա. 5.

### ԳԼՈՒԽ Ա

1 Առաքեալը իր բարեւը տալէն ետեւ՝ կը գոհանայ Աստուծմէ Կողոսացի քրիստոնէից հաւատքին համար. 7 կը հաստատէ Եպափրասի վարդապետութիւնը. 9 նաեւ աղօթք կ՚ընէ որ անոնք շնորհօք աճին. 14 կը նկարագրէ ճշմարիտ Քրիստոսը. 21 կը քաջալերէ զանոնք՝ Յիսուս Քրիստոսը ընդունելու, եւ կը յիշեցնէ իր պաշտօնը։

1 Պօղոս՝ Յիսուս Քրիստոսի առա-
քեալը Աստուծոյ կամքովը, եւ
2 Տիմոթէոս եղբայրը, Կողոսայի մէջ
եղող սուրբ ու հաւատացեալ եղ-
3 բայրներուն Քրիստոսով. Շը-
նորհք եւ խաղաղութիւն ձեզի Աս-
տուծմէ մեր Հօրմէն՝ *եւ Տէր Յի-
սուս Քրիստոսէն"։
Ամէնատեն ձեզի համար աղօթք
ընելով՝ կը գոհանանք Աստուծմէ
ու մեր Տէր Յիսուս Քրիստոսին
4 Հօրմէն, Լսելով ձեր հաւատքը՝
Քրիստոս Յիսուսի վրայ, եւ ան
սէրը՝ որ բոլոր սուրբերուն վրայ
5 ունիք. Ան յոյսին համար որ եր-
կինքը կը պահուի ձեզի, որուն
վրայով առաջուց լսեցիք աւետա-
րանին ճշմարտութեան խօսքովը.
6 Որ ձեզի հասաւ, ինչպէս որ բոլոր
աշխարհ, ու պտղաբեր ըլլալով
կ՚աճի, ինչպէս ձեր մէջն ալ, ան
օրուընէն որ դուք լսեցիք ու
ճանչցաք Աստուծոյ շնորհքը ճըշ-
7 մարտութիւնով. Ինչպէս որ սոր-
վեցաք մեր սիրելի ծառայակիցէն՝
Եպափրասէն, Որ ձեզի համար հա-
ւատարիմ պաշտօնեայ մըն է Քը-
8 րիստոսի. Որ ինքն ալ մեզի պատ-
մեց ձեր սէրը հոգիով։
9 Անոր համար մենք ալ ան օրուը-
նէ որ լսեցինք՝ չենք դադարիր ձե-
զի համար աղօթք ընելէն ու խընդ-
րուածք մատուցանելէն, Որ կա-
տարեալ ըլլաք անոր կամքին գի-
տութեամբը՝ բոլոր իմաստութիւ-
10 նով ու հոգեւոր հանճարով. Որ
դուք Տէրոջը արժանի կերպով քա-
լէք ամէն բանի մէջ զինքը հաճե-
ցընելով, ամէն բարի գործքերու
մէջ պտղաբեր ըլլալով, ու աճե-
ցուն Աստուծոյ գիտութիւնովը.
11 Ամէն ուժով ուժովցած՝ իր փա-
ռաւոր զօրութեանը չափովը՝ բո-
լոր համբերութեան ու երկայն-
մտութեան՝ ուրախութեամբ.
12 Գոհանալով Հօր Աստուծմէն, որ
մեզ լոյսի մէջ բնակող սուրբերուն
վիճակին մասնակից ըլլալու արժա-
13 նացուց. Որ մեզ ազատեց խա-
ւարին իշխանութենէն, Ու իր
սիրելի Որդւոյն թագաւորութեա-
14 նը փոխադրեց. Որ անով մենք
փրկութիւն ունինք իր արիւնովը,
15 այսինքն մեղաց թողութիւն. Որ
ինքը աներեւոյթ Աստուծոյ պատ-
կերն է՝ բոլոր ստեղծուածներուն
16 անդրանիկը. Ինչու որ անով ա-
մէն բան ստեղծուեցաւ, ինչ որ եր-
կինքը ու ինչ որ երկրի վրայ, ա-
նոնք որ կ՚երեւնան՝ եւ անոնք որ չեն
երեւնար, թէ աթոռները՝ թէ
տէրութիւնները՝ թէ պետութիւն-
ները՝ թէ իշխանութիւնները.
բոլոր բաները անով՝ ու անոր հա-
17 մար ստեղծուեցաւ. Ու անիկայ
ամէն բանէն առաջ է, եւ ամէն
բան անով հաստատ կը կենայ.
18 Եւ անիկայ է մարմինին՝ այսինքն
եկեղեցիին գլուխը. որ ինքը սկիզբն
է՝ մեռելներէն անդրանիկը, որ

Յամփ Տեառն 64

Հռով. ժբ. 2. Եփե. ե. 10. 17. Եփե. ա. 8. Եփե. դ. 1. Փիլ. ա. 27. ա Թես. բ. 12. ա Թես. դ. 1. Յօհ. ժե. 16. բ Կոր. թ. 8. Փիլ. ա. 11. Տիտ. դ. 1. Եբր. ժգ. 21. Եփե. դ. 16. զ. 10. Եփե. դ. 2. Գոր. ե. 41. Հռով. ե. 3. Եփե. ե. 20. Գղ. գ. 15. Գոր. իզ. 18. Եփե. ա. 11. Եփե. զ. 12. Եբր. բ. 14. ա Պետ. բ. 9. ա Թես. բ. 12. բ Պետ. ա. 11. Եփե. ա. 7. բ Կոր. դ. 4. Եբր. ա. 3. Յայտ. դ. 14. Յօհ. ա. 3. ա Կոր. ը. 6. Եփե. գ. 9. Եբր. ա. 2.

բ Հռով. ը. 38. Եփե. ա. 21. Գղ. բ. 10. 15. ա Պետ. գ. 22. Հռով. ժա. 36. Եբր. բ. 10. Յօհ. ա. 1. 3. ժէ. 5. ա Կոր. ը. 6. Եփե. ա. 10. 22. դ. 15. ե. 23. ա Կոր. ժա. 3. Գոր. իզ. 23. ա Կոր. ժե. 20. 23. Յայտ. ա. 5.

Ցամի Տեառն 64

ինքը ըլլայ ամէն բանի մէջ նախա-
19 պատիւ. Ինչու որ Հօրը հաճեցաւ
որ Աստուածութեան բոլոր լեցու-
20 նութիւնը անոր մէջը բնակի. Եւ
անով ամէնը հաշտեցնէ իրեն
հետ, խաղաղութիւն ընելով ա-
նոր խաչին վրայ թափած արիւնովը,
թէ երկրի վրայ և թէ երկինքի մէջ
եղողները։
21 Եւ ձեզ ալ՝ որ ատեն մը օտա-
րացած էիք, ու չար գործքերով
թշնամիներ ձեր խորհուրդներովը,
22 Հիմա հաշտեցուց բուն իր մարմի-
նովը՝ մահուամբ, որ ձեզ անոր
դիմացը սուրբ ու անբիծ և անա-
23 րատ կայնեցնէ. Եթէ որ կենաք
հաւատքին մէջ հիմնուած՝ ու հաս-
տատ՝ և առանց խախտելու աւե-
տարանին յոյսէն՝ որ լսեցիք, Որ
երկինքին տակը եղած բոլոր ստեղ-
ծուածներուն քարոզուեցաւ, Ո-
րուն ես Պօղոս սպասաւոր եղայ։
24 Հիմա ուրախ եմ՝ իմ ձեզի հա-
մար կրած չարչարանքներուս վրայ,
ու Քրիստոսի կրած նեղութիւն-
ներուն պակասութիւնը իմ մար-
մնիս մէջը կը լեցնեմ՝ անոր մար-
մնին համար, որ եկեղեցին է.
25 Որուն ես սպասաւոր եղայ Աս-
տուծոյ տնտեսութիւնովը՝ որ ին-
ծի տրուեցաւ ձեզի համար՝ Աս-
տուծոյ խօսքը լման քարոզելու,
26 Այն խորհուրդը՝ որ ծածկուած էր
ամէն դարերէն ու ազգերէն հետէ,
ու հիմա իր սուրբերուն յայտ-
27 նուեցաւ. Որոնց ուզեց Աս-
տուած գիտցնել, թէ ինչ է
աս խորհուրդիս փառաւոր ճոխու-
թիւնը հեթանոսներուն մէջ. որ
ան Քրիստոսն է ձեր մէջը՝ փա-
28 ռաց յոյսը. Որ անիկայ մենք կը
քարոզենք, ու ամէն մարդ կը խը-
րատենք, և կը սորվեցնենք ամէն
մարդ բոլոր իմաստութիւնով, որ
ամէն մարդ կատարեալ կեցնենք
29 Քրիստոս Յիսուսով. Որուն հա-
մար ես ալ կ'աշխատիմ՝ ջանք
ընելով իր ներգործութեանը հա-
մեմատ՝ որ զօրութիւնով իմ մէջս
'ի գործ կը դրուի։

## ԳԼ. Բ

1 Դարձեալ կը յորդորէ զանոնք Քրիստոսի հաւատքին մէջ հաստատ կենալ. 8 կը զգուշացընէ հեթանոսական փիլիսոփայութենէ և փուճ աւանդութիւններէ, 18 հրեշտակաց կրօնքէն, 20 և օրինական ծէսերէն, որոնք Քրիստոսով վերջացած են։

1 Վասնզի կ'ուզեմ որ գիտնաք՝ թէ
ինչպէս մեծ անձկութիւն ու-
նիմ ձեզի համար ու Լաւոդիկեցւոց
համար, ու ամէն անոնց համար՝ որ
իմ երեսս մարմինով չեն տեսեր.
2 Որ անոնց սիրտերը մխիթարուին՝
սիրով միացած, ու կատարեալ
իմացողութեան բոլոր ճոխութեա-
նը հասնին, այսինքն Հօր Աստուծոյ
և Քրիստոսի խորհուրդին գիտու-
3 թեանը. Որուն մէջը իմաստու-
թեան ու գիտութեան բոլոր գան-
4 ձերը պահուած են։ Եւ աս կ'ը-
սեմ, որ չըլլայ թէ մէկը հրապու-
րական խօսքերով ձեզ մոլորցնէ։
5 Որ թէպէտ մարմինով հեռու եմ,
բայց հոգւով ձեզի հետ եմ, և
կ'ուրախանամ երբոր ձեր բարե-
կարգութիւնը կը տեսնեմ, ու ձեր
հաւատքին հաստատութիւնը Քը-
6 րիստոսի վրայ։ Ուստի ինչպէս որ
ընդունեցիք Քրիստոս Յիսուս Տէ-
7 րը՝ անով քալեցէք, Արմատ կա-
պած ու անոր վրայ շինուած՝ և հա-
ւատքին մէջ հաստատուած՝ ինչպէս
որ սորվեցաք, և անոր մէջը աճե-
8 ցէք գոհութիւնով։ Զգուշացէ՛ք՝
չըլլայ որ մէկը ձեզ կողոպտէ փի-
լիսոփայութիւնով ու փուճ խա-
բէութիւնով, մարդոց աւան-
դութեան պէս ու աշխարհիս
սկզբունքներուն պէս, և ոչ թէ
Քրիստոսի վարդապետութեանը պէս.
9 Ինչու որ անոր մէջը կը բնակի Աս-
տուածութեան բոլոր լեցունու-
10 թիւնը՝ մարմնապէս։ Եւ դուք ալ
անով լցուած էք. որ ինքը գլուխ
է բոլոր իշխանութեան ու պետու-
11 թեան. Որ անով դուք անձեռա-
գործ թլփատութիւնով թլփա-
տուեցաք՝ մեղաց մարմինը մերկա-
նալով Քրիստոսի թլփատութիւ-
12 նովը. Թաղուելով անոր հետ
մկրտութիւնով, որով նաև անոր
հետ յարութիւն առիք Աստուծոյ
զօրութեանը հաւատալով. որ ին-
քը զանիկայ մեռելներէն յարուց։
13 Եւ ձեզ՝ որ ատեն մը յանցանք-
ներու մէջ ու ձեր մարմնին ան-
թլփատութեանը մէջ մեռած էիք,
կենդանացուց անոր հետը. մեր ա-
14 մէն յանցանքները ներեց մեզի, Ու
հրամաններով եղած մեզի հակառակ
եղող ձեռագիրը՝ որ մեզի դէմ կը
կենար, ջնջեց, զանիկայ մէջ տե-
ղէն վերցուց՝ ու խաչափայտին վրայ
15 գամեց. Եւ իշխանութիւնները ու
պետութիւնները մերկացուց, ու
յայտնապէս խայտառակեց՝ յաղ-
թելով անոնց *անով։
16 Ուստի ալ մէկը թող չդատէ
ձեզ ուտելու կամ խմելու կամ

Յօհ. ա. 16։ գ. 34։ Գղ. բ. 9։ գ. 11։ Եփե. ա. 10։ բ Կոր. ե. 18։ Եփե. բ. 14, 15, 16։ Եփե. բ. 1, 2, 12, 19։ դ. 18։ Տիտ. ա. 15, 16։ Եփե. բ. 15, 16։ Ղու. ա. 75։ Եփե. ա. 4։ ե. 27։ ա Թես. դ. 7։ Տիտ. բ. 14։ Յուդ. 24։ Եփե. գ. 17։ Գղ. բ. 7։ Յօհ. ժե. 6։ Հմր 6։ Հռով. ժ. 18։ Գոր. ա. 17։ բ Կոր. գ. 6։ դ. 1։ ե. 18։ Եփե. գ. 7։ Հմր 25։ ա Տիմ. բ. 7։ Հռով. ե. 3։ բ Կոր. է. 4։ Եփե. գ. 1, 13։ բ Կոր. ա. 5, 6։ Փիլ. գ. 10։ բ Տիմ. ա. 8։ բ. 10։ Եփե. ա. 23։ ա Կոր. թ. 17։ Գաղ. բ. 7։ Եփե. գ. 2։ Հմր 23։ Հռով. ժզ. 25։ ա Կոր. բ. 7։ Եփե. գ. 9։ Մատ. ժգ. 11։ բ Տիմ. ա. 10։ բ Կոր. բ. 14։ Հռով. թ. 23։ Եփե. ա. 7։ գ. 8։ ա Տիմ. ա. 1։ Գոր. ի. 20, 27, 31։ բ Կոր. ժա. 2։ Եփե. ե. 27։ Հմր 22։ ա Կոր. ժե. 10։ Գղ. բ. 1։ Եփե. ա. 19։ գ. 7, 20։ —— Գղ. ա. 29։ Փիլ. ա. 30։ ա Թես. բ. 2։

բ Կոր. ա. 6։ Գղ. գ. 14։ Փիլ. գ. 8։ Գղ. ա. 9։ ա Կոր. ա. 24։ բ. 6, 7։ Եփե. ա. 8։ Գղ. ա. 9։ Հռով. ժզ. 18։ բ Կոր. ժա. 13։ Եփե. դ. 14։ ե. 6։ Հմր 8, 18։ ա Կոր. ե. 3։ ա Թես. բ. 17։ ա Կոր. ժդ. 40։ բ Պետ. ե. 9։ ա Թես. դ. 1։ Յուդ. 3։ Եփե. բ. 21, 22։ գ. 17։ Գղ. ա. 23։ Երեմ. իթ. 8։ Հռով. ժզ. 17։ Եփե. ե. 6։ Հմր 18։ Եբր. ժգ. 9։ Մատ. ժե. 2։ Գաղ. ա. 14։ Հմր 22։ Գաղ. դ. 3, 9։ Հմր 20։ Յօհ. ա. 14։ Գղ. ա. 19։ Յօհ. ա. 16։ Եփե. ա. 20, 21։ ա Պետ. դ. 22։ Գղ. ա. 16։ բ Օր. ժ. 16։ լ. 6։ Երեմ. դ. 4։ Հռով. բ. 29։ Փիլ. գ. 3։ Հռով. զ. 4։ Եփե. դ. 22։ Գղ. դ. 8, 9։ Հռով. զ. 4։ Գղ. դ. 1։ Եփե. ա. 19։ գ. 7։ Գոր. բ. 24։ Եփե. բ. 1, 5, 6, 11։ Եփե. բ. 14—16։ Եփե. գ. 12։ Ծն. գ. 15։ Սաղ. կը. 18։ Ես. ծգ. 12։ Մատ. ժբ. 29։ Ղու. ժ. 18։ ժա. 22։ Յօհ. ժբ. 31։ ժզ. 11։ Եփե. դ. 8։ Եբր. բ. 14։ *Կամ իր անձովը։ Հռով. ժդ. 3, 10, 12։ Հռով. ժդ. 2, 17։ ա Կոր. բ. 8։ Հռով. ժդ. 5։ Գաղ. դ. 10։

Յամի Տեառն 64

տօներու՝ կամ ամսագլուխներու՝
կամ շաբաթներու կողմանէ .
17 Որոնք գալու բաներուն շուքն են .
բայց մարմինը Քրիստոսինն
18 է ։ Չըլլայ որ մէկը զրկէ ձեզ
մրցանակէն . որ ուզէ խոնարհու-
թիւնով ու հրեշտակներու կրօնքով
չտեսած բաներուն միջամուխ ըլ-
լալ , իր մարմինին միտքովը փուճ
19 տեղը հպարտանալով . Եւ չբռնէ
Գլուխը՝ ուսկից որ բոլոր մարմինը
յօդուածներով ու խաղերով հա-
ղորդուած ու մէկտեղ կցուած՝ Աս-
20 տուծոյ աճումովը կ'աճի ։ Թէ որ
դուք Քրիստոսի հետ աշխար-
հիս սկզբունքներէն մեռաք , ալ
ինչու համար աշխարհիս մէջ կենդա-
նի եղողներու պէս կանոննե-
21 րու կը հնազանդիք . Մի
մօտենար , համը մի՛ առներ , մի՛
22 դպչիր . ( Որոնց ամէնը ապականու-
թեան համար են գործածու-
թեամբ , ) մարդոց պատուիրանք-
ներուն ու սորվեցուցածներուն հա-
23 մեմատ . Որոնք իմաստութեան
կերպարանք մը ունին ինքնակամ
կրօնքով , ու խոնարհութիւնով , և
մարմինի չխնայելով , բայց չէ թէ
պատիւի մը արժանի են , հապա
մարմինը յագեցընելու կը ծառայեն ։

ԳԼ. Գ

1 Առաքեալը կը ցուցնէ թէ ո՛ւր փնտռելու ենք զՔրիստոս . 5 կը յորդորէ երկրաւոր անդամները սպաննել , 10 հին մարդը վրայէ հանել ու Քրիստոսը հագնիլ . 12 սիրոյ խոնարհութեան և ուրիշ պարտաւորութեանց վրայով խրատ կու տայ ։

1 Արդ՝ թէ որ Քրիստոսի հետ յա-
րութիւն առիք , ուրեմն վերի
բաները փնտռեցէք ուր որ Քրիս-
տոս կը նստի Աստուծոյ աջ կողմը ։
2 Վերի բաները մտածեցէք , չէ թէ
3 աս երկրիս վրայինները ։ Ինչու
որ դուք մեռաք , ու ձեր կեանքը
պահուած է Աստուծոյ քովը Քրիս-
4 տոսի հետ ։ Երբոր Քրիստոս՝
մեր կեանքը յայտնուի , ան ատե-
նը դուք ալ անոր հետ փառքով
պիտի յայտնուիք ։
5 Ուստի ձեր երկրաւոր անդամ-
ները սպաննեցէք . պոռնկու-
թիւնը , պղծութիւնը , անառակ
կիրքը , չար ցանկութիւնը , ու
ագահութիւնը՝ որ կռապաշտու-
6 թիւն է . Որոնց համար Աստու-
ծոյ բարկութիւնը անհնազանդու-
7 թեան որդւոց վրայ կու գայ . Որ
ատեն մը դուք ալ անոնց մէջը կը
քալէիք , երբոր անոնց մէջը կ'ապ-
8 րէիք ։ Բայց հիմա մէկդի ձգե-
ցէք դուք ալ ան ամէնը . բարկու-
թիւնը , սրտմտութիւնը , չարու-
թիւնը , հայհոյութիւնը , անհա-
մեստ խօսքերը ձեր բերաններէն ։
9 Իրարու սուտ մի՛ խօսիք . հին
մարդը իր գործքերովը ձեր վրայէն
10 հանեցէք . Եւ հագէք այն նորը
գիտութիւնով նորոգուած՝ իր
Ստեղծողին պատկերին պէս .
11 Ուր որ Յոյն ու Հրեայ , թլփա-
տութիւն ու անթլփատութիւն ,
Բարբարոս , Սկիւթացի , ծառայ
կամ ազատ չկայ . հապա Քրիստոս
է ամէնը՝ և ամէն բանի մէջ ։
12 Ուստի Աստուծոյ ընտրեալ սուր-
բերու ու սիրելիներու պէս՝ գթա-
նի գութ հագէք Գթութը , ողորմու-
թիւնը , քաղցրութիւնը , խոնար-
հութիւնը , հեզութիւնը , երկայն-
13 մտութիւնը , Իրարու համբե-
րելով և իրարու ներելով՝ թէ որ
մէկը մէկու մը դէմ տրտունջ մը
ունենայ . ինչպէս որ Քրիստոս ձե-
14 զի ներեց , անանկ ալ դուք ։ Եւ
աս ամէն բաներուն վրայ Սէրը
հագէք , որ կատարելութեան
15 կապն է . Ու Քրիստոսի խաղա-
ղութիւնը ձեր սրտերուն մէջը թա-
գաւորէ . որ դուք անոր կանչուե-
ցաք մէկ մարմինով . ու գո-
16 հացող եղէք ։ Քրիստոսի խօսքը
ձեր մէջը բնակի առատապէս ամէն
իմաստութիւնով իրար սորվեցընե-
լու ու խրատելու , սաղմոսներով ,
և օրհնութիւններով , ու հոգևոր
երգերով , ձեր սրտերուն մէջը
շնորհքով զԱստուած օրհնելու ։
17 Եւ ամէն ինչ որ կ'ընէք թէ խօս-
քով և թէ գործքով , բոլորը Տէր
Յիսուսին անունովը ըրէք , Աս-
տուծոյ ու Հօրը գոհութիւն մա-
տուցանելով անոր ձեռքովը ։
18 Կնիկներ՝ հնազանդ եղէք ձեր է-
րիկներուն , ինչպէս որ կը վայլէ՝
19 Տէրոջմով ։ Էրիկներ՝ սիրեցէք
ձեր կնիկները , ու դառն մի՛ ըլլաք
20 անոնց ։ Որդիներ՝ ամէն բանի
մէջ հնազանդ եղէք ձեր ծնողքնե-
րուն . ինչու որ ան է Տէրոջը
21 առջևը հաճելի ։ Հայրեր՝ ձեր
որդիները մի՛ բարկացընէք , որ չվհա-
22 տին ։ Ծառաներ՝ ամէն բանի
մէջ հնազանդ եղէք ձեր մարմնաւոր
տէրերուն . չէ թէ աչքի առջև ծա-
ռայելով՝ մարդահաճոներու պէս ,
հապա սրտի միամտութեամբ՝ Տէ-
23 րոջմէ վախնալով . Ինչ որ կ'ընէք՝
սրտանց ըրէք , որպէս թէ Տէրո-
24 ջը՝ ու չէ թէ մարդոց , Գիտնա-
լով որ ժառանգութեան հատու-
ցումը Տէրոջմէ պիտի առնէք .

Յամի Տեառն 64

28 . 33 ։ ա Պետ . գ . 7 ։ Եփե . դ . 31 ։ Եփե . գ . ... ե . 24 ։ Տիտ . բ . 9 ։ Եփե . գ . 4 ։ Եփե . գ . 5 . ... գ . 1 ։ Տիտ . բ . 9 ։ ա Պետ . բ . 18 ։ Հռմ 20 ։ Փիլիմ . 16 ։ Եփե . զ . 6 . 7 ։ Եփե . գ . 8 ։

ծ ինչու որ Տէր Քրիստոսին կը
25 ծառայէք . Բայց անօրէնը իր անօ-
րէնութեանը պատիժը պիտի ընդու-
նի , ‡ և աչառութիւն չկայ ։

## ԳԼ. Դ

1 Կը յորդորէ ջերմեռանդութեամբ աղօթք ընել , 5 խելացութեամբ վարուիլ անոնց հետ՝ որոնք դեռ Քրիստոսի կատարեալ գիտութիւնը չունին . 10 Իր բարեւը կը մատուցանէ անոնց , և ամէն կերպ յաջողութիւն կը խնդրէ ։

1 Տէրեր՝ ‑ ձեր ծառաներուն իրա-
ւունք ու հաւասարութիւն
տուէք , գիտնալով որ դուք ալ
Տէր ունիք երկինքը ։
2 բ Շարունակ աղօթքի եռանդ ե-
ղէք , անոր մէջը արթուն մնալով
3 գ գոհութեամբ ։ դ Աղօթք ըրէք նաև
մեզի համար , ե որ Աստուած խօսքին
դուռը բանայ մեզի զ Քրիստոսի
խորհուրդը խօսելու , է որուն հա-
4 մար կապուած ալ եմ , Որ յայտնի
ընեմ զանիկայ՝ ինչպէս որ ինծի կը
5 վայլէ խօսիլ ։ ը Խոհեմութեամբ
վարուեցէք դուրսիններուն հետ ,
6 թ ժամանակը ծախու առնելով ։ Ձեր
խօսքը ամէն ատեն ժ շնորհքով՝
ի աղով համեմուած ըլլայ ,
լ ու գիտնաք թէ ինչպէս կը վայլէ
ձեզի ամէն մէկուն պատասխան
տալ ։
7 խ Աւ իմ վրայովս բոլորը պիտի
իմացընէ ձեզի Տիւքիկոս սիրելի եղ-
բայրը և հաւատարիմ պաշտօնեան
8 ու ծառայակիցը Տէրոջմով . ծ Որն
որ ասոր բանին համար ձեզի խրկեցի ,
որ *գիտնաք դուք մեր վրայով , ու
9 ինքը ձեր" սիրտերը մխիթարէ , կ Ո-
նեսիմոս հաւատարիմ ու սիրելի
եղբօրը հետ մէկտեղ՝ որ ձեզմէ մէկն
է . իրենք ամէն բանը ձեզի պիտի
10 իմացընեն՝ ինչ որ հոս կայ ։ հ Բարեւ
կ'ընէ ձեզի Արիստարքոս՝ իմ գե-
րութեան ընկերս , ձ և Մարկոս՝
Բառնաբասին եղբօրորդին , ( որուն
համար պատուէր առիք . թէ որ
ձեզի գալու ըլլայ , ընդունեցէք ա-
11 նիկայ , ) Եւ Յիսուսը՝ որ Յուստոս
ըսուած է , որոնք թլփատութենէն
են . ասոնք միայն ինծի գործակից
եղան Աստուծոյ թագաւորութեա-
նը մէջ , որոնք ինծի մխիթարու-
12 թիւն եղան ։ ղ Բարեւ կ'ընէ ձեզի
Եպափրաս՝ Քրիստոսի ծառան , որ
ձեզմէ մէկն է , ճ ամէն ատեն աղօթ-
քի մէջ ձեզի համար ջանք ընելով ,
մ որ դուք կատարեալ ու լման կե-
նաք Աստուծոյ բոլոր կամացը մէջ ։
13 Քանզի անոր վրայով ես կը վկայեմ,
թէ շատ նախանձաւորութիւն
ունի ձեզի համար՝ ու Լաւոդիկէի և
Յերապօլիսի մէջ եղողներուն հա-
14 մար ։ Բարեւ կ'ընէ ձեզի սիրելի
յ Ղուկաս բժիշկը , ն ու Դեմասը ։
15 Բարեւ ըրէք եղբայրներուն՝ որ
Լաւոդիկիա են , և Նիմփասին ,
շ ու անոր տանը մէջի եկեղեցիին ։
16 ո Ու երբոր աս թուղթը ձեր մէջը
կարդացուի , Լաւոդիկեցւոց եկե-
ղեցիին մէ'ջն ալ կարդալ տուէք .
և դուք ալ Լաւոդիկիայէն եկած
17 թուղթը կարդացէք ։ չ Ու ըսէք
Արքիպպոսին . պ Զգոյշ եղիր քու
սպասաւորութեանդ՝ որ Տէրոջմով
18 առիր , որ անիկայ կատարես ։ ջ Ա-
բարեւը իմ ձեռքիս՝ Պօղոսինն է .
ռ իմ կապերս միտքերնիդ թող ըլ-
լան ։ ս Շնորհքը ձեզի հետ , ամէն ։

Յամի Տեառն 64

ծ ա Կոր. է. 22 ։ ‡ Հռով. բ. 11 ։ Եփե. զ. 9 ։ ա Պետ. ա. 17 ։ Տե՛ս բ Օր. ժ. 17 ։

‑ Եփե. զ. 9 ։ բ Ղու. ժը. 1 ։ Հռով. ժբ. 12 ։ Եփե. զ. 18 ։ ա Թես. ե. 17 , 18 ։ գ Գղ. բ. 7 ։ դ. 15 ։ դ Եփե. զ. 19 ։ բ Թես. գ. 1 ։ ե ա Կոր. ժզ. 9 ։ բ Կոր. բ. 12 ։ զ Մատ. ժգ. 11 ։ ա Կոր. դ. 1 ։ Եփե. զ. 19 ։ Գղ. ա. 26 ։ բ. 2 ։ է Եփե. զ. 20 ։ Փիլ. ա. 7 ։ ը Եփե. ե. 15 ։ ա Թես. դ. 11 ։ թ Եփե. ե. 16 ։ ժ Ժող. ժ. 12 ։ Գղ. գ. 16 ։ ի Մար. թ. 49 ։ լ ա Պետ. գ. 15 ։ խ Եփե. զ. 21 ։ ծ Եփե. զ. 22 ։

* Որ կամ՝ որ գիտնայ ձեր վրայով , ու ձեր

կ Փիլիմ. 10 ։

Յամի Տեառն 64

հ Գործ. ժթ. 29 ։ ի. 4 ։ իէ. 2 ։ Փիլիմ. 24 ։ ձ Գործ. ժե. 37 ։ բ Տիմ. դ. 11 ։

ղ Գղ. ա. 7 ։ Փիլիմ. 23 ։ ճ Հռով. ժե. 30 ։ մ Մատ. ե. 48 ։ ա Կոր. բ. 6 ։ ժդ. 20 ։ Փիլ. գ. 15 ։ Եբր. ե. 14 ։

յ բ Տիմ. դ. 11 ։ ն բ Տիմ. դ. 9 ։ Փիլիմ. 24 ։ շ Հռով. ժզ. 4 ։ ա Կոր. ժզ. 19 ։ ո ա Թես. ե. 27 ։ չ Փիլիմ. 2 ։ պ ա Տիմ. դ. 6 ։ ջ ա Կոր. ժզ. 21 ։ բ Թես. գ. 17 ։ ռ Եբր. ժգ. 3 ։ ս Եբր. ժգ. 25 ։

# ԱՌԱՋԻՆ ԹՈՒՂԹ

# ՊՕՂՈՍԻ ԱՌԱՔԵԼՈՅՆ

## ԱՌ ԹԵՍԱՂՈՆԻԿԵՑԻՍ

Յամի Տեառն 54

## ԳԼՈՒԽ Ա

1 Առաքեալը կը ծանուցանէ Թեսաղոնիկեցւոց՝ թէ ինքը ամէնատեն կը յիշէ զանոնք իր գոհութեանը ու աղօթքին մէջ, 5 և թէ ինքը աղէկ համոզուած է թէ անոնց հաւատքը ճշմարիտ ու անկեղծ է, և թէ Աստուծոյ դարձած են։

1 Պօղոս և [ա]Սիղուանոս ու Տիմո-
թէոս՝ Թեսաղոնիկեցւոց եկե-
ղեցիին՝ Հայր Աստուծմով՝ ու Տէր
2 Յիսուս Քրիստոսով. [բ]Շնորհք և
խաղաղութիւն ձեզի *Աստուծմէ
մեր Հօրմէն՝ ու Տէր Յիսուս Քրիս-
տոսէն"։
[գ]Կը գոհանանք Աստուծմէ ամէն
ատեն ձեր ամենուն համար՝ [դ]ան-
դադար ձեզ յիշելով մեր աղօթք-
3 ներուն մէջը. Յիշելով [ե]ձեր հա-
ւատքին գործը ու [զ]սիրոյ աշխա-
տութիւնը և մեր Տէր Յիսուս
Քրիստոսի յոյսին համբերութիւ-
նը՝ Աստուծոյ ու մեր Հօրը առ-
4 ջևը. Եւ գիտնալով՝ Աստուծմէ սի-
րուած եղբայրներ՝ [է]ձեր ընտրու-
5 թիւնը. [ը]Որ մեր աւետարանը չէ
թէ մինակ խօսքով եղաւ ձեզի,
հապա զօրութիւնով ալ [թ]և Հո-
գւով Սրբով, [ժ]ու շատ ազդու-
ութիւնով, [ի]ինչպէս որ գիտէք
ալ թէ ինտոր կեցանք ձեր մէջը
6 ձեզի համար։ [լ]Դուք ալ մեզի ու
Տէրոջը նմանող ըլլալով՝ ընդու-
նեցիք խօսքը շատ նեղութեան
մէջ՝ [խ]Հոգւոյն Սրբոյ ուրախութիւ-
7 նովը. Անանկ որ դուք օրինակ ե-
ղաք բոլոր հաւատացեալներուն՝ ո-
րոնք Մակեդոնիայի ու Աքայիայի
8 մէջ են։ [ծ]Ինչու որ ձեզմէ հնչա-
կուեցաւ Տէրոջը խօսքը. չէ թէ
մինակ Մակեդոնիայի ու Աքայիա-
յի մէջ, [կ]հապա նաև ամէն տեղ
ձեր հաւատքը որ դէպ ի Աստուած
է, տարածուեցաւ. անանկ որ ալ
պէտք չէ մեզի բան մը խօսիլ։
9 Քանզի իրենք կը պատմեն մեզի հա-
մար [հ]թէ ինչպէս եղաւ մեր ձեր
քովը մտնելը, [ձ]և ինչպէս դուք
կուռքերէն Աստուծոյ դարձաք՝
կենդանի ու ճշմարիտ Աստուծոյ
10 ծառայելու [ղ]Եւ սպասելու անոր
Որդւոյն՝ [ճ]երկինքէն. [մ]որ ինքը
մեռելներէն յարոյց զանիկայ՝ [յ]այ-
նինքն Յիսուսը, [ն]որ կ՚ազատէ մեզ
գալու բարկութենէն։

## ԳԼ. Բ

1 Առաքեալը կը ցուցընէ թէ ինչպէս աւետարանը Թեսաղոնիկէ մտաւ ու քարոզուեցաւ, և ինչպէս անոնք ալ ընդունեցին 18 պատճառը կ՚իմացընէ թէ ինքը ինչու այնքան երկար ատեն հեռու մնաց անոնցմէ, և թէ ինչու այնքան մեծ փափաք ունէր զանոնք տեսնելու։

1 [ա]Վանզի եղբայրներ դուք ինքնի-
րեննիդ գիտէք ձեր մէջը մըտ-
նելնիս որ պարապ տեղը չեղաւ.
2 Հապա առաջ, [բ]Փիլիպպէի մէջ
չարչարանք քաշելով ու անար-
գուելով ինչպէս որ գիտէք, [գ]հա-
մարձակութիւն ըրինք մեր Աս-
տուծովը՝ [դ]ձեզի պատմելու Աս-
տուծոյ աւետարանը [ե]մեծ հակա-
3 ռակութեան մէջ։ [զ]Ինչու որ մեր
յորդորանքը ոչ մոլորութենէ է,
ու ոչ պղծութենէ, և ոչ խաբէ-
4 ութեամբ. [է]Հապա ինչպէս որ
մենք Աստուծմէ ընտրուեցանք
[ը]ու աւետարանը մեզի հաւատացուե-
ցաւ. այնպէս կը խօսինք. [թ]չէ թէ
մարդոց հաճոյ ըլլալու համար,
հապա Աստուծոյ՝ [ժ]որ մեր սիրտե-
5 րը կը քննէ. [ի]Ինչու որ մենք բնաւ
շողոքորթութեան խօսքեր չգործա-
ծեցինք ինչպէս որ գիտէք, ոչ
ալ ագահութեան պատճառանք
6 [լ]Աստուած վկայ է. [խ]Եւ մարդոց-
մէ փառք չփնտռեցինք ոչ ձեզմէ,
7 ոչ ալ ուրիշներէն, [ծ]թէև կրնա-
յինք՝ իբրև Քրիստոսի [կ]առաքեալ-
ներ [հ]ծանրութիւն տալ. [ձ]Բայց
մենք հեզ եղանք ձեր մէջը, ինտոր
որ դայեակ մը իր երախաները կը
8 խնամէ. Նոյնպէս ալ մենք ձեր
վրայ փափաք ունենալով [ղ]կը յօ-
ժարէինք, ոչ միայն Աստուծոյ ա-
ւետարանը ձեզի տալ, [ճ]հապա մեր
անձերն ալ. ինչու որ դուք մեզի
9 սիրելիներ եղաք. Քանզի կը յի-
շէք եղբայրներ՝ մեր աշխատու-
թիւնը ու ջանքը. որ [մ]ձեզմէ մէկու
մը ծանրութիւն չտալու համար

ա Բ Կոր. ա. 19։ Բ Թես. ա. 1։ Ա Պետ. ե. 12։
բ Եփե. ա. 2։
* Ոմանք չունին։
գ Հռով. ա. 8։ Եփե ա. 16։ Փիլիմ 4։
դ Գղ. բ. 13։
ե Յօհ զ. 29։ Գաղ. ե 6։ Գղ դ 6։ Բ Թես ա. 3. 11։ Յակ. բ 17։
զ Հռով ժզ 6։ Եբր. զ. 10։
է Կող. գ. 12։ Բ Թես. բ 12։
ը Մար ժզ. 20։ Ա Կոր. բ 4։ դ. 20։
թ Բ Կոր զ. 6
ժ Կող բ 2։
ի Գղ. բ. 1 5 10 11։ Բ Թես. գ. 7.
լ Ա Կոր. դ. 16։ ժա. 1։ Փիլ գ 17։ Գղ բ 14։ Բ Թես. գ 9։
խ Գործ. ե 41։ Եբր ժ 34։
ծ Հռով ժ. 18։
կ Հռով. ա 8։ Բ Թես. ա 4
հ Գղ բ 1։
ձ Ա Կոր ժբ 2։ Գաղ. դ 8
ղ Հռով. բ 7։ Փիլ գ 20։ Տիտ բ. 13։ Բ Պետ գ 12։ Յայտ. ա. 7։

Յամի Տեառն 54

ճ Գործ. ա. 11։ Գղ. գ. 15։ Բ Թես. ա. 7։
մ Գործ բ. 24։
յ Մատ. գ. 7։ Հռով. ե. 9։ Գղ. ե. 9։

ա Գղ. ա. 5, 9։
բ Գործ. ժզ. 22։
գ Գղ. ա. 5։
դ Գործ ժէ. 2։
ե Փիլ. ա. 30։ Կող. բ. 1։
զ Բ Կոր. է. 2։ Հմր 5։ Բ Պետ. ա. 16։
է Ա Կոր է. 25։ Ա Տիմ. ա 11, 12։
ը Ա Կոր. թ. 17. Գաղ. բ. 7։ Տիտ ա. 3։
թ Գաղ ա. 10։
ժ Առակ. ժէ 3։ Հռով ը 27։
ի Գործ ի. 33։ Բ Կոր. բ. 17։ դ. 2։ է. 2։ ժբ 17.
լ Հռով. ա 9։
խ Յօհ. ե. 41, 44։ ժբ 43։ Ա Տիմ ե 17.
ծ Ա Կոր թ 4, 6, 12, 18։ Բ Կոր ժ 1, 2, 10, 11։ ժգ. 10։ Բ Թես գ. 9. Փիլիմ 8, 9։
կ Ա Կոր թ 1 2 5.
հ Բ Կոր ժա 9 ժբ 13 14 Բ Թես գ 8։
ձ Ա Կոր բ 3 թ 22.
ղ Բ Կոր ժգ 4 Բ Տիմ բ 24։
ճ Հռով ա 11 ժե 29։
մ Բ Կոր ժբ 15։
յ Բ Կոր ժբ 13 14.

Յամ Տեառն 54

Գոր. ի. 34։ ա Կոր. դ. 12։ բ Կոր. ժա. 9։ բ Թես. գ. 8։
Գղ. ա. 5։
բ Կոր. է. 2։ բ Թես. գ. 7։
Եփե. դ. 1։ Փիլ. ա. 27։ Կող. ա. 10։ Գղ. դ. 1։
ա Կոր. ա. 9։ Գղ. ե. 24։ բ Թես. բ. 13։ բ Տիմ. ա. 9։
Գղ. ա. 2։
Մատ. ժ. 40։ Գաղ. դ. 14։ բ Պետ. գ. 2։
Գաղ. ա. 22։
Գոր. ժէ. 5, 13։
Եբր. ժ. 33, 34։
Գոր. բ. 23։ գ. 15։ ե. 30։ է. 52։
Մատ. ե. 12։ իգ. 34, 37։ Ղու. ժգ. 33, 34։ Գոր. է. 52։
Եսթ. գ. 5։
Ղու. ժա. 52։ Գոր. ժգ. 50։ ժդ. 5, 19։ ժէ. 5, 13։ ժը. 12։ ժթ. 9։ իբ. 21, 22։
Ծն. ժե. 16։ Մատ. իգ. 32։
Մատ. իգ. 6, 14։
ա Կոր. ե. 3։ Կող. բ. 5։
Գղ. դ. 10։
Հռով. ա. 13։ ժե. 22։
բ Կոր. ա. 14։ Փիլ. բ. 16։ դ. 1։
Առակ. ժզ. 31։
ա Կոր. ժե. 23։ Գղ. գ. 13։ Յայտ. ա. 7։ իբ. 12։

Հմր 5։
Գոր. ժէ. 15։
Հռով. ժզ. 21։ ա Կոր. ժզ. 10։ բ Կոր. ա. 19։

գիշեր ու ցորեկ գործելով, ձեզի
Աստուծոյ աւետարանը քարոզե-
10 ցինք։ Դուք վկայ էք, և Աս-
տուած ալ, թէ ինչպէս սրբու-
թիւնով ու արդարութիւնով և
անարատութիւնով վարուեցանք
11 ձեզի հետ՝ որ հաւատացիք. Ինչ-
պէս գիտէք ալ, որ ձեզմէ ա-
մէն մէկը՝ ինչպէս հայր մը իր որ-
12 դիները՝ կը յորդորէինք
ու կը մխիթարէինք, և վկայու-
թիւն կը դնէինք որ դուք Աստու-
ծոյ վայելածին պէս քալէք, որ
ձեզ իր թագաւորութեանը ու
13 փառքին կանչեց։ Ասոր համար
մենք ալ անդադար կը գոհանանք
Աստուծմէ, որ մեզմէ Աստուծոյ
խօսքը լսելով ընդունեցիք, ոչ
թէ իբրև մարդոց խօսք, հապա
ինչպէս որ ճշմարտապէս է, Աս-
տուծոյ խօսք, որ նաև կը ներգոր-
ծէ ձեր մէջը որ կը հաւատաք։
14 Քանզի դուք եղբայրներ՝ նմանող
եղաք Աստուծոյ եկեղեցիներուն՝
որ Հրէաստանի մէջ են Քրիստոս
Յիսուսով. ինչու որ դուք ալ
նոյն չարչարանքները կրեցիք ձեր
համազգիներէն, ինչպէս որ անոնք
15 ալ Հրէաներէն. Որոնք Տէր Յի-
սուսն ալ մեռցուցին՝ մարգարէ-
ներն ալ, և մեզ հալածեցին, ու
Աստուծոյ անհաճոյ են, և բոլոր
16 մարդոց հակառակ են. Ու մեզ
կ'արգիլեն հեթանոսներուն խօսե-
լէն՝ անոնց փրկութեանը համար,
որ իրենց մեղքերուն չափը լեցնեն
ամէն ատեն. և բարկութիւնը
անոնց վրայ հասեր է մինչև վերջը։
17 Իսկ մենք եղբայրներ՝ քիչ
մը ատեն ձեզմէ որբ մնացինք երե-
սով, ու ոչ թէ սրտով, բայց ա-
ւելի ջանացինք ձեր երեսը տեսնելու
18 մեծ փափաքով։ Անոր համար ես
Պօղոս մէկ երկու անգամ ուզեցի
ձեզի գալ, բայց Սատանան մեզ
19 արգիլեց։ Ինչու որ ո՞վ է մեր
յոյսը, կամ ուրախութիւնը՝ կամ
մեր պարծանքին պսակը, եթէ ոչ
դուք՝ մեր Տէր Յիսուս Քրիստոսի
20 առջևը՝ անոր գալու ատենը։ Ո-
րովհետև դուք էք մեր փառքը՝ և
ուրախութիւնը։

## ԳԼ. Գ

1 Պօղոս կը յայտնէ իր մեծ սէրը որ ունէր Թե-
սաղոնիկեցւոց վրայ, թէ՝ Տիմոթէոսը անոնց
խրկելով՝ որ հաստատէ և մխիթարէ զանոնք,
թէ անոնց բարեգործութեանցը վրայ ուրա-
խանալով, 10 և թէ աղօթք ընելով անոնց
համար, և անվտանգ անոնց երթալու փա-
փաքելով։

1 Ուստի ալ չկրնալով աւելի համ-
բերել, աղէկ երևցաւ մեզի
2 մինակ Աթէնք մնալ. Ու Տիմո-
թէոս մեր եղբայրը ու Աստուծոյ
պաշտօնեան և մեր գործակիցը Քր-
իստոսի աւետարանին մէջ խրկե-
ցինք ձեզ հաստատելու ու մխիթա-
3 րելու ձեր հաւատքին համար. Որ
այս նեղութիւններուն մէջ ոչ մէ-
կը չխախտի. ինչու որ դուք ինք-
նիրեննիդ գիտէք որ մենք ասոր հա-
4 մար կեցեր ենք։ Քանզի
երբոր մենք ձեր քով էինք, առա-
ջուց ձեզի կը զրուցէինք թէ նե-
ղութիւններու պիտի հանդիպինք,
ինչպէս որ եղաւ ալ, ու գիտէք։
5 Ասոր համար ես ալ չկրնալով ա-
ւելի համբերել, խրկեցի ձեր
հաւատքը գիտնալու, որ չըլլայ
թէ փորձողը ձեզ փորձած ըլլայ,
և մեր աշխատութիւնը պարապ
6 ըլլայ։ Բայց հիմա երբոր Տիմո-
թէոս ձեզմէ մեզի եկաւ, ու ձեր
հաւատքին և սիրոյն աւետիսը մեզի
տուաւ, որ ամէն ժամանակ մեր
բարի յիշատակը ունիք,
և կը փափաքիք մեզ տեսնելու,
7 ինչպէս որ մենք ալ ձեզ. Ասոր
համար եղբայրներ՝ ձեր վրայ մխի-
թարուեցանք մեր բոլոր վիշտերուն
ու նեղութիւններուն վրայ՝ ձեր
8 հաւատքովը. Ինչու որ հիմա
կենդանի ենք մենք, եթէ որ դուք
հաստատուն կենաք Տէրոջմով։
9 Քանզի ի՞նչ գոհութիւն կրնանք
մատուցանել Աստուծոյ ձեր վրա-
յով՝ այն ամէն ուրախութիւնին
համար՝ որ կ'ուրախանանք ձեզի
10 համար մեր Աստուծոյ առջևը. Ու
գիշեր ու ցորեկ խիստ շատ աղա-
չանք կ'ընենք ձեր երեսը տեսնե-
լու, ու ձեր հաւատքին պակսու-
11 թիւնները լեցնելու։ Բայց ինքը
Աստուած ու մեր Հայրը՝ և մեր Տէ-
րը Յիսուս Քրիստոս մեր ճամբան
12 դէպ 'ի ձեզի յաջողէ։ Ու Տէրը
աճեցնէ ու աւելցնէ ձեր սէրը
իրարու վրայ՝ ու ամենուն վրայ,
ինչպէս որ մենք ալ ձեր վրայ ու-
13 նինք, Հաստատելով ձեր սիրտերը
անարատ՝ սրբութեան մէջ Աստու-
ծոյ և մեր Հօրը առջևը՝ մեր Տէրոջը
Յիսուս Քրիստոսի գալու ատենը
իր բոլոր սուրբերուն հետ մէկտեղ։

## ԳԼ. Դ

1 Կը յորդորէ զանոնք որ ամէն կերպով յառաջ
երթան աստուածպաշտութեան մէջ, 6 որ
սուրբ ու սրբոց վարմունք ունենան, 9 որ
մէկզմէկ սիրեն, 11 որ ամէն մէկը խաղաղու-
թեամբ իր գործը գործէ, 13 ու վերջապէս
ննջեցեալներուն վրայով իրենց տրտմութիւնը
չափաւոր ըլլայ։ 17 Առաքեալը այս վերջին
յորդորանքին վրայ համառօտ կերպով մը կը
նկարագրէ մեռելոց յարութիւնը, և Քրիս-
տոսի երկրորդ գալուստը՝ դատաստանի հա-
մար։

1 Ասկէ ետև եղբայրներ՝ ձեզի կ'ա-
ղաչենք, ու կը յորդորենք Տէր

Յամ Տեառն 54

Եսթ. դ. 13։
Գոր. թ. 16։ ժդ. 21։ ի. 23։ իա. 11։ ա Կոր. դ. 9։ բ Տիմ. գ. 12։ ա Պետ. բ. 21։
Գոր. ի. 23։
Հմր 1։
ա Կոր. է. 5։ բ Կոր. ժա. 3։
Գաղ. բ. 2։ դ. 11։ Փիլ. բ. 16։
Գոր. ժը. 1, 5։
Փիլ. ա. 8։
բ Կոր. ա. 4։ է. 6, 7, 13։
Փիլ. դ. 1։
Գղ. ա. 2։
Գոր. իդ. 7։ բ Տիմ. ա. 3։
Հռով. ա. 10, 11։ ժե. 32։
Գղ. բ. 17։
բ Կոր. ժգ. 9, 11։ Կող. դ. 12։
Մար. ա. 3։
Գղ. դ. 10։
Գղ. դ. 9։ ե. 15։ բ Պետ. ա. 7։
ա Կոր. ա. 8։ Փիլ. ա. 10։ Գղ. ե. 23։ բ Թես. բ. 16։ ա Յօհ. գ. 20, 21։
Զաք. ժդ. 5։ Յուդ. 14։

Յամի Տեառն 54

ա Փիլ. ա. 27։ Կող. բ. 6։
բ Գղ. բ. 12։
գ Կող. ա. 10։
դ Հռով. ժբ. 2։ Եփե. ե. 17։
ե Եփե. ե. 27։
զ ա Կոր. զ. 15, 18։ Եփե. ե. 3։ Կող. գ. 5։
է Հռով. զ. 19։ ա Կոր. զ. 15, 18։
ը Կող. գ. 5։ Հռով. ա. 24, 26։
թ Եփե. դ. 17, 18։
ժ ա Կոր. ժե. 34։ Գաղ. դ. 8։ Եփե. բ. 12։ դ. 18։ բ Թես. ա. 8։
ի Ղև. ժթ. 11, 13։ ա Կոր. զ. 8։
* Կամ բանի մը
լ բ Թես. ա. 8։
խ Ղև. ժա. 44։ ժթ. 2։ ա Կոր. ա. 9։ Եբր. ժբ. 14։ ա Պետ. ա. 15, 16։
ծ Ղու. ժ. 16։
կ ա Կոր. բ. 10։ է. 40։ ա Յով. գ. 24։
+ Ոմանք մեզի
հ Գղ. ե. 1։
ձ Երեմ. լա. 34։ Յով. զ. 45։ ժդ. 26։ Եբր. ը. 11։ ա Յով. բ. 20, 27։
ղ Մատ. իբ. 39։ Յով. ժգ. 34։ ժե. 12։ Եփե. ե. 2։ ա Պետ. դ. 8։ ա Յով. գ. 11, 23։ դ. 21։
ճ Գղ. ա. 7։
մ Գղ. գ. 12։
յ բ Թես. գ. 11։ ա Պետ. դ. 15։
ն Գոր. ի. 35։ Եփե. դ. 28։ բ Թես. գ. 7, 8, 12։
շ Հռով. ժգ. 13։ բ Կոր. ը. 21։ Կող. դ. 5։ ա Պետ. բ. 12։ ‡ Կամ մէկու
ո Տես Ղև. ժթ. 28։ բ Օր. ժդ. 1, 2։ բ Թագ. ժբ. 20։ Եփե. բ. 12։
պ ա Կոր. ժե. 13։
ջ ա Կոր. ժե. 18, 23։ Գղ. գ. 13։
ռ դ Թագ. ժգ. 17, 18։ ի. 35։
ս ա Կոր. ժե. 51։
վ Մատ. իդ. 30, 31։ Գոր. ա. 11։ բ Թես. ա. 7։
տ ա Կոր. ժե. 52։

Յիսուսով. որ ինչպէս մեզմէ ա-
ռիք՝ թէ ինչպէս պէտք է ձեզի
քալել ու Աստուծոյ հաճոյ ըլլալ,
2 ալ աւելի առաջ երթաք։ Քան-
զի գիտէք թէ ինչ պատուէրներ
3 տուինք ձեզի Տէր Յիսուսով։ Ին-
չու որ Աստուծոյ կամքը աս է՝
ձեր սուրբ ըլլալը, որ
դուք ետ կենաք պոռնկութենէն.
4 Ձեզմէ ամէն մէկը գիտնայ իր ա-
մանը սրբութիւնով ու պատիւով
5 ստանալ. Ոչ թէ ցանկութեան
կիրքով՝ ինչպէս հեթանոսները՝
որոնք Աստուած չեն ճանչնար։
6 Չըլլայ որ բանին մէջ չափէ
անցնի ու իր եղբայրը զրկէ.
Ինչու որ Տէրը ատ բոլոր բաներուն
համար վրէժխնդիր է. ինչպէս ա-
ռաջուց ըսինք ձեզի, ու վկայու-
7 թիւն տուինք։ Ինչու որ Աս-
տուած մեզ պղծութեան չկանչեց,
8 Հապա սրբութեան։ Ուստի ան
որ կ'անարգէ, չէ թէ անիկայ մարդ
մը կ'անարգէ, հապա Աստուած՝
որ իր Սուրբ Հոգին ալ ձեզի
տուաւ։
9 Բայց եղբայրսիրութեան վրա-
յով պէտք չէ ձեզի բան գրել.
Ինչու որ դուք ինքնիրեննիդ Աս-
տուծմէ սորված էք մէկզմէկ սի-
10 րել. Եւ իրաւ ատ բանը կ'ը-
նէք դուք բոլոր Մակեդոնիայի
մէջ եղող ամէն եղբայրներուն,
սակայն կ'աղաչենք ձեզի եղբայր-
ներ՝ որ ալ աւելի առատանաք.
11 Եւ ջանք ընէք ու հանդարտ կե-
նաք. ու ամէն մէկերնիդ իր գործը
գործէ, ու ձեր ձեռքերովը աշ-
խատիք, (ինչպէս որ ձեզի պա-
տուիրեցինք,) Որ դուրսիններուն
հետ պարկեշտութեամբ վարուիք,
ու բանի մը կարօտ չըլլաք։
12 Չենք ուզեր եղբայրներ՝ որ տգէտ
ըլլաք ննջեցեալներուն վրայով. որ
չտրտմիք ինչպէս ուրիշները՝ որո-
13 նք յոյս չունին։ Քանզի թէ
որ կը հաւատանք թէ Յիսուսը
մեռաւ ու յարութիւն առաւ, Հա-
նանկ ալ Աստուած ննջեցեալները
Յիսուսով պիտի բերէ անոր հետ։
14 Վասն զի աս կը զրուցենք ձեզի
Տէրոջը խօսքովը, թէ մենք որ
մինչև Տէրոջը գալուստը ողջ կը
մնանք, բնաւ ննջեցեալներէն ա-
15 ռաջ պիտի չանցնինք։ Ինչու
որ ինքը Տէրը ազդարարութեան
հրամանով՝ հրեշտակապետին ձայ-
նովը ու Աստուծոյ փողովը եր-
կինքէն պիտի իջնէ, եւ Քրիստո-
սով մեռածները առաջ յարու-
16 թիւն պիտի առնեն։ Ետքը մենք
ալ որ ողջ մնացած ենք՝ անոնցմով
մէկտեղ պիտի յափշտակուինք
ամպերով Տէրոջը առջևը ելլելու
օդին մէջը. եւ անանկ յաւիտեան
17 Տէրոջը հետ պիտի ըլլանք։ Ուստի
մէկզմէկ մխիթարեցէք աս խօսքե-
րով։

ԳԼ. Ե

1 Կը շարունակէ իր նկարագրութիւնը Քրիստոսին դատաստանի գալուն վրայով, 16 և զանազան խրատներ տալով՝ 23 իր թուղթը կը վերջացնէ։

1 Բայց ատ ժամերուն ու ժամա-
նակներուն համար եղբայրներ՝
պէտք չէ բան մը գրել ձեզի.
2 Քանզի դուք ինքնիրեննիդ աղէկ
գիտէք՝ թէ Տէրոջը օրը գիշե-
րուան գողի պէս անանկ կը հասնի։
3 Երբոր ըսելու ըլլան՝ թէ խաղաղու-
թիւն ու ապահովութիւն է, տան
ատենը կորուստը յանկարծակի ա-
նոնց վրայ պիտի հասնի՝ յղիին
երկանցը պէս, ու պիտի չազատին։
4 Բայց դուք եղբայրներ՝ խաւարի
մէջ չէք, որ ատ օրը գողի մը պէս
5 ձեր վրայ հասնի. Ինչու որ դուք
ամէնքդ լուսոյ որդիք էք, ու
ցորեկուան որդիք. գիշերուան
6 չենք, խաւարինը չենք։ Ուրեմն
չքնանանք ինչպէս որ ուրիշները,
հապա արթուն ու զգաստ ըլլանք։
7 Քանզի անոնք որ կը քնանան՝
գիշերը կը քնանան, և անոնք որ
կ'արբենան՝ գիշերը կ'արբենան։
8 Բայց մենք որովհետև ցորեկուան
ենք, զգաստ ըլլանք, և հաւատ-
քին ու սիրոյն զրահը վրանիս հագ-
նինք, ու փրկութեան յուսոյն
9 սաղաւարտը գլուխնիս դնենք։ Ին-
չու որ Աստուած մեզ բարկութեան
համար չորոշեց, հապա փրկութիւն
ստանալու համար մեր Տէր Յիսուս
10 Քրիստոսին ձեռքովը. Որ ինքը մե-
զի համար մեռաւ. որպէս զի թէ
արթուն ըլլանք և թէ քնանանք,
11 իր հետը մէկտեղ ապրինք։ Անոր
համար մէկզմէկ մխիթարեցէք, և
իրարու շինութիւն տուէք, ինչ-
պէս որ կ'ընէք ալ։
12 Եւ ձեզի կ'աղաչենք եղբայրներ՝
որ ճանչնաք ձեր աշխատաւորները
ու վերակացուները Տէրոջմով, ու
13 ձեզի խրատ տուողները. Եւ զա-
նոնք մեծապէս պատուեցէք սիրով՝
իրենց գործքին համար. Իրարու
14 հետ խաղաղութիւն ունեցէք. Եւ
ձեզի կ'աղաչենք եղբայրներ՝ ան-
կարգ վարմունք ունեցողները խը-
րատեցէք, փոքրասիրտները մխի-

Յամի Տեառն 54

ր ա Կոր. ժե. 23, 52։
ց ա Կոր. ժե. 51։
ւ Գոր. ա. 9։ Յայտ. ժա. 12։
փ Յով. ժբ. 26։ ժդ. 3։ ժէ. 24։
ք Գղ. ե. 11։
ա Մատ. իդ. 3, 36 Գոր. ա. 7։
բ Գղ. դ. 9։
գ Մատ. իդ. 43, 44։ իե. 13։ Ղու. ժբ. 39, 40։ բ Պետ. գ. 10։ Յայտ. գ. 3։ ժզ. 15։
դ Ես. ժդ. 6–9։ Ղու. ժէ. 27, 28, 29։ իա. 34, 35։ բ Թես. ա. 9։
ե Երեմ. ժգ. 21։ Ովս. ժգ. 13։
զ Հռով. ժգ. 12, 13։ ա Յով. բ. 8։
է Եփե. ե. 8։
ը Մատ. իե. 5։
թ Մատ. իդ. 42։ իե. 13։ Հռով. ժգ. 11, 12, 13։ ա Պետ. ե. 8։
ժ Ղու. իա. 34, 36։ Հռով. ժգ. 13։ ա Կոր. ժե. 34։ Եփե. ե. 14։
ի Գոր. բ. 15։
լ Ես. ծթ. 17։ Եփե. զ. 14, 16, 17։
խ Հռով. թ. 22։ Գղ. ա. 10։ ա Պետ. բ. 8։ Յուդ. 4։
ծ բ Թես. բ. 12, 13։
կ Հռով. ժդ. 8, 9։ բ Կոր. ե. 15։
հ Գղ. դ. 17։
ձ ա Կոր. ժզ. 18։ Փիլ. բ. 29։ ա Տիմ. ե. 17։ Եբր. ժգ. 7, 17։
ղ Մար. թ. 49։
ճ բ Թես. գ. 11, 12։
մ Եբր. ժբ. 12։

Յամ Տեառն 54

ա Հռով. ժդ. 1 ; ժե. 1 ; Գաղ. զ. 1, 2 ; բ Գաղ. ե. 22 ; Եփե. դ. 2 ; Կող. գ. 12 ; բ Տիմ. դ. 2 ; գ Ղև. ժթ. 18 ; Առակ. ի. 22 ; իդ. 29 ; Մատ. ե. 39, 44 ; Հռով. ժբ. 17 ; ա Կոր. զ. 7 ; ա Պետ. գ. 9 ; դ Գաղ. զ. 10 ; Գղ. գ. 12 ; ե բ Կոր. զ. 10 ; Փիլ. դ. 4 ; զ Ղու. ժը. 1 ; իա. 36 ; Հռով. ժբ. 12 ; Եփե. զ. 18 ; Կող. դ. 2 ; ա Պետ. դ. 7 ; է Եփե. ե. 20 ; Կող. գ. 17 ; ը Եփե. դ. 30 ; ա Տիմ. դ. 14 ; բ Տիմ. ա. 6 ; թ ա Կոր. ժդ. 30 ; ա Կոր. ժդ. 1, 39 ;

թարեցէք, տկարներուն ձեռնտու
եղէք, ամենուն ալ երկայնամիտ
15 եղէք։ Զգուշացէք՝ չըլլայ որ
մէկը չարութեան փոխարէն չարու-
թիւն հատուցանէ մէկու մը. հա-
պա ամէն ատեն բարիք ընելու
ետեւէ եղէք թէ իրարու, և թէ ա-
16 մենուն։ Ամէն ատեն ուրախ ե-
17 ղէք։ Անդադար աղօթք ըրէք։
18 Ամէն բանի մէջ գոհութիւն
տուէք. ինչու որ աս է Աստուծոյ
կամքը Քրիստոս Յիսուսով ձեր
19 վրայ։ Սուրբ Հոգին մի՛ մարէք։
20 Մարգարէութիւնները մի՛ արհա-
21 մարհէք։ Ամէն բան փորձեցէք,
22 բարին ամուր բռնեցէք։ Ամէն
տեսակ գէշ բաներէն ետ կեցէք։
23 Եւ ինքը խաղաղութեան Աստուա-
ծը ձեզ բոլորովին սուրբ ընէ, ու
ձեր բոլոր հոգին և շունչը ու մար-
մինը անարատ պահուի մինչև մեր
Տէր Յիսուս Քրիստոսի գալու ա-
24 տենը։ Հաւատարիմ է ան՝ որ
ձեզ կանչեց, որ ինքը պիտի կա-
տարէ ալ։
25 Եղբայրներ՝ աղօթք ըրէք մեզի
26 համար։ Բարեւ տուէք բոլոր եղ-
բայրներուն սուրբ համբուրով։
27 Կ'երդմնցընեմ ձեզ Տէրոջմով,
որ այս թուղթը բոլոր սուրբ եղ-
28 բայրներուն կարդացուի։ Մեր
Տէր Յիսուս Քրիստոսի շնորհքը
ձեր հետը ըլլայ. ամէն։

Յամ Տեառն 54

ժ ա Կոր. բ. 11, 15 ; ա Յով. գ. 1 ; ի Փիլ. գ. 8 ; լ Գղ. գ. 11 ; խ Փիլ. գ. 9 ; ծ Գղ. գ. 13 ; կ ա Կոր. ա. 8 ; հ ա Կոր. ա. 9 ; ժ. 13 ; բ Թես. գ. 3 ; ձ Կող. գ. 3 ; բ Թես. գ. 1 ; ղ Հռով. ժզ. 16 ; ճ Կող. դ. 16 ; բ Թես. գ. 14 ; մ Հռով. ժզ. 20, 24 ; բ Թես. գ. 18 ;

---

ԵՐԿՐՈՐԴ ԹՈՒՂԹ

# ՊՕՂՈՍԻ ԱՌԱՔԵԼՈՅՆ

## ԱՌ ԹԵՍԱՂՈՆԻԿԵՑԻՍ

---

Յամ Տեառն 54

ա բ Կոր. ա. 19 ; բ ա Թես. ա. 1 ; գ ա Կոր. ա. 3 ; դ ա Թես. ա. 2, 3 ; գ. 6, 9 ; Գղ. բ. 12 ; ե բ Կոր. է. 14 ; թ. 2 ; ա Թես. բ. 19, 20 ; զ ա Թես. ա. 3 ; է ա Թես. բ. 14 ; ը Փիլ. ա. 28 ; թ ա Թես. բ. 14 ;

### ԳԼՈՒԽ Ա

1 Պօղոս առաքեալ կը յայտնէ Թեսաղոնիկեցւոց իր բարի գաղափարը որ ունէր անոնց հաւատքին՝ սիրոյն և համբերութեանը վրայ. 11 և միանգամայն հալածանքի ժամանակ միխիթարութիւն ունենալու զանազան պատճառներ յառաջ կը բերէ, որոնց գլխաւորը Աստուծոյ արդար դատաստանէն կ'առնէ։

1 Պօղոս և Սիղուանոս ու Տիմոթէ-
ոս՝ Թեսաղոնիկեցւոց եկեղեցի-
ին մեր Հայր Աստուծով՝ ու Տէր
2 Յիսուս Քրիստոսով. Շնորհք
և խաղաղութիւն ձեզի Աստուծմէ
մեր Հօրմէն՝ ու Տէր Յիսուս Քը-
րիստոսէն։
3 Պարտինք ամէն ատեն Աստուծմէ
գոհանալ ձեզի համար՝ եղբայրներ,
ինչպէս որ կը վայլէ. քանզի ձեր
հաւատքը շատ աճելու վրայ է, և
ձեր ամէն մէկուն սէրը իրարու վրայ
4 կը շատնայ. Անանկ որ մենք ալ
ձեզմով կը պարծենանք Աստուծոյ
եկեղեցիներուն մէջը՝ ձեր համբե-
րութեանը ու հաւատքին համար
ձեր բոլոր հալածանքներուն ու նե-
ղութիւններուն մէջ, որոնց որ դուք
5 կը համբերէք. Որ է Աստուծոյ
արդար դատաստանին ապացոյցը՝
որ դուք արժանանաք Աստուծոյ
թագաւորութեանը, որուն հա-
մար ալ նեղութիւն կը քաշէք.
6 Քանզի Աստուծոյ առջևը իրա-
ւունք է՝ ձեզի նեղութիւն տուողնե-
7 րուն նեղութիւն հատուցանել, Եւ
ձեզի նեղութիւն քաշողներուդ՝
մեզի հետ հանգիստ, Տէր Յի-
սուսին երկինքէն յայտնուելու ա-
տենը իր զօրաւոր հրեշտակներովը,
8 Բորբոքած կրակով վրէժ առնելու
անոնցմէ՝ որ Աստուած չեն ճանչ-
նար, և որ մեր Տէր Յիսուս Քրիս-
տոսի աւետարանին չեն հնազանդիր.
9 Որոնք պիտի պատժուին յաւի-
տենական սատակումով՝ Տէրո-
ջը երեսէն ու անոր զօրութեանը
10 փառքէն, Երբոր ինքը գայ փա-
ռաւորուելու իր սուրբերուն մէջը,
և հիանալի ըլլալու բոլոր հաւա-
տացեալներուն մէջը, (ինչու որ
մեր վկայութիւնը ձեր մէջը հաւա-
11 տացուեցաւ,) ան օրը։ Աս
պատճառովս ալ ամէն ատեն ձեզի
համար աղօթք կ'ընենք, որ մեր
Աստուածը ձեզ արժանի ընէ իր
կոչումին, և իր բարութեան բոլոր
հաճութիւնը կատարէ, ու հա-
12 ւատքին գործը զօրութիւնով. Որ
մեր Տէր Յիսուս Քրիստոսին ա-
նունը փառաւորուի ձեր մէջը, և

Յամ Տեառն 54

ժ Յայտ. զ. 10 ; ի Յայտ. ժդ. 13 ; լ ա Թես. գ. 13 ; Յուդ. 14 ; խ Եբր. ժ. 27 ; ժբ. 29 ; բ Պետ. գ. 7 ; Յայտ. իա. 8 ; ծ Սաղ. ծթ. 6 ; ա Թես. դ. 5 ; կ Հռով. բ. 8 ; հ Փիլ. գ. 19 ; բ Պետ. գ. 7 ; ձ Օր. լգ. 2 ; Եսա. բ. 19 ; Գղ. բ. 8 ; ղ Սաղ. ձթ. 7 ; ճ Սաղ. կը. 35 ; մ Հռով. 5 ; յ ա Թես. ա. 3 ; ն ա Պետ. ա. 7 ; դ. 14 ;

Յամի Տեառն 54

դուք ալ անոր մէջ՝ մեր Աստուծոյն
ու Տէր Յիսուս Քրիստոսին շնոր-
հացը համեմատ ։

## ԳԼ. Բ

1 Կը խնդրէ անոնցմէ որ հաստատ կենան իրենց ընդունած ճշմարտութեանը մէջ. 3 կը ցուցնէ թէ ոմանք հաւատքէն պիտի ապստամբին, 9 և Նեռը պիտի յայտնուի՝ Տէրոջը օրը գալէն առաջ. 15 իր առջի յորդորանքները կը կրկնէ, ու աղօթք կ'ընէ անոնց համար ։

1 Կ'աղաչենք ձեզի եղբայրներ՝ մեր
Տէր Յիսուս Քրիստոսի գալըս-
տեանը՝ ու մեր անոր քովը ժող-
2 վուելուն համար, Չըլլայ որ շուտ
մը խախտիք ձեր միտքէն, ու չըլ-
լայ որ խռովիք՝ ոչ հոգիով ու ոչ
խօսքով, ոչ ալ թուղթով մը
իբր թէ մեզմէ գրուած, որպէս թէ
Տէրոջը օրը եկած հասած ըլլայ ։
3 Չըլլայ որ մէկը ձեզ խաբէ մէկ
բանով մը. ինչու որ ան օրը պիտի
չգայ՝ եթէ որ ապստամբութիւնը
առաջ չգայ, ու յայտնուի մեղաց
4 մարդը՝ կորստեան որդին, Ան հա-
կառակորդը հպարտացած ամէնուն
վրայ՝ որ Աստուած կ'ըսուի՝ կամ կը
պաշտուի, մինչև անիկայ Աստուծոյ
տաճարին մէջ պիտի նստի, և ինք-
զինքը ցուցնէ թէ Աստուած է ։
5 Չէ՞ք յիշեր՝ որ երբ ձեր քովն էի,
6 աս բաները կ'ըսէի ձեզի ։ Եւ
հիմա դուք ինքնիրեննիդ գիտէք
ինչ է ան որ կ'արգիլէ, որ ինքը
7 իր ատենին յայտնուի ։ Ինչու
որ անօրէնութեան խորհուրդը հի-
մակուընէ կը զօրանայ. բայց ան
որ հիմա կ'արգիլէ, պիտի արգիլէ՝
մինչև որ ինքը մէջտեղէն վերնայ ։
8 Ու ետքը պիտի յայտնուի ան
անօրէնը, որն որ Տէր Յիսուս
իր բերնին հոգիովը պիտի սպա-
ռէ, ու իր գալուն յայտնուե-
9 լովը պիտի կործանէ. Որուն
գալը Սատանային ազդեցութիւ-
նովն է՝ բոլոր զօրութիւնով և
նշաններով ու սուտ հրաշքներով,
10 Եւ կորուսեալներուն վրայ անիրա-
ւութեան բոլոր խաբէութիւնովը,
որովհետև անոնք ճշմարտութեան
սէրը չընդունեցին՝ որ փրկուին ։
Անոր համար Աստուած ալ պիտի
խրկէ անոնց ուժով մոլորութիւն
11 մը՝ որ ստութեան հաւատան. Որ
դատապարտուին ամէն անոնք՝ որ
չհաւատացին ճշմարտութեան,
հապա անօրէնութեան յօժարե-
ցան ։
12 Բայց մեզի պէտք է միշտ Աս-
տուծմէ գոհանալ ձեզի համար՝
Տէրոջմէ սիրուած եղբայրներ. ինչու
որ Աստուած առաջուց ձեզ
ընտրեց փրկուելու Հոգիին սրբե-
լովը՝ ու ճշմարտութեան հաւատ-
13 քովը. Որուն ձեզ կանչեց մեր ա-
ւետարանելովը՝ մեր Տէր Յիսուս
Քրիստոսի փառքը ստանալու ։
14 Ուստի եղբայրներ՝ հաստատ
կեցէք, ու պինդ բռնեցէք ան
աւանդութիւնները որ սորվեցաք՝
թէ խօսքով ու թէ մեր թուղ-
15 թովը ։ Եւ ինքը մեր Տէր Յիսուս
Քրիստոսը ու մեր Հայրը Աստուած,
որ մեզ սիրեց՝ ու տուաւ մեզի
յաւիտենական մխիթարութիւն՝
16 և բարի յոյս շնորհքով, Ձեր սիր-
տերը մխիթարէ՝ և ձեզ հաստատէ
ամէն բարի խօսքերու և գործքերու
մէջ ։

## ԳԼ. Գ

1 Կը խնդրէ որ անոնք աղօթք ընեն իրեն համար. 3 անոնց վրայ իր ունեցած վստահութիւնը կը յայտնէ. 5 անոնց համար Աստուծոյ աղօթք կ'ընէ. 6 զանազան պատուէրներ կու տայ, մանաւանդ ծուլութենէ և անառակ ընկերներէ հեռու կենալու վրայով. 16 և իր թուղթը աղօթքով ու բարևներով կը վերջացընէ ։

1 Վերջապէս եղբայրներ՝ մեզի
համար աղօթք ըրէք, որ Տէրոջը
խօսքը յառաջանայ, ու փառաւոր
2 ըլլայ, ինչպէս որ ձեր մէջը. Եւ
որ անիրաւ ու չար մարդիկներէն
ազատինք. ինչու որ ամէնը *հա-
3 ւատք չունին ։ Բայց Տէրը հաւա-
տարիմ է, որ ձեզ պիտի հաս-
4 տատէ, ու չարէն պահէ ։ Եւ ձեր
վրայ վստահութիւն ունինք Տէրոջ-
մով, թէ ինչ որ ձեզի պատուիրե-
ցինք՝ կ'ընէք, ու պիտի ընէք ալ ։
5 Եւ Տէրը ձեր սիրտերը Աստուծոյ
սիրոյն ու Քրիստոսի համբերու-
թեանը ուղղէ ։
6 Եւ ձեզի կը պատուիրենք եղ-
բայրներ՝ մեր Տէր Յիսուս Քրիս-
տոսի անունովը, Որ ետ քաշուիք
ամէն եղբօրմէ՝ որ անկարգու-
թեամբ կը վարուի, ու չէ թէ ան
աւանդութեանը պէս՝ որ մեզմէ
7 առաւ ։ Ինչու որ դուք ինքնի-
րեննիդ գիտէք թէ ինչպէս պար-
տիք մեզի նմանող ըլլալ. Քան-
զի մենք ձեր մէջը անկարգութեամբ
8 չվարուեցանք, Ո՛չ ալ մէկուն հացը
ձրի կերանք. Հապա ջանքով և
աշխատանքով գիշեր ու ցորեկ կը
գործէինք՝ ձեզմէ մէկուն ծանրու-
9 թիւն չտալու համար. Չէ՛ թէ
որ մենք իշխանութիւն չունէինք,
հապա որ անձերնիս ձեզի օրինակ
ընենք՝ որ մեզի նմանող ըլլաք ։
10 Վասն զի երբոր մենք ձեր քովն
էինք՝ աս ձեզի կը պատուիրէինք,
թէ ան որ չուզեր գործ գործել,
11 հաց ալ թող չուտէ ։ Արդ՝ կը
լսենք որ ձեր մէջէն ոմանք ան-
կարգութեամբ կը վարուին, ու

ա Թես. դ. 11 ։ ա Տիմ. ե. 13 ։ ա Պետ. դ. 15 ։

Յամի Տեառն 54

ա ա Թես. դ. 15 ։
բ Մատ. իդ. 31 ։ Մար. ժգ. 27 ։ ա Թես. դ. 16 ։
գ Մատ. իդ. 4 ։ Եփե. ե. 6 ։ ա Յով. դ. 1 ։
դ Մատ. իդ. 4 ։ Եփե. ե. 6 ։
ե ա Տիմ. դ. 1 ։
զ Դան. է. 25 ։ ա Յով. բ. 18 ։ Յայտ. ժգ. 11, 12 ։
է Յով. ժէ. 12 ։
ը Ես. ժդ. 13 ։ Եզեկ. իը. 2, 6, 9 ։ Դան. է. 25 ։ ժա. 36 ։ Յայտ. ժգ. 6 ։
թ ա Կոր. ը. 5 ։
ժ ա Յով. բ. 18 ։ դ. 3 ։
ժա Յոբ. դ. 9 ։ Ես. ժա. 4 ։ Ովս. զ. 5 ։ Յայտ. բ. 16 ։ ժթ. 15, 20, 21 ։
ժբ Դան. է. 10, 11 ։
ժգ Գղ. ա. 8, 9 ։ Եբր. ժ. 27 ։
ժդ Յով. ը. 41, 44 ։ Եփե. բ. 2 ։ Յայտ. ժը. 28 ։
ժե Տես Օր. ժգ. 1 ։ Մատ. իդ. 24 ։ Յայտ. ժգ. 13 ։ ժթ. 20 ։
ժզ բ Կոր. բ. 15 ։ դ. 3 ։
ժէ Հռով. ա. 24, 25 ։ Տես. գ Թագ. իբ. 22 ։ Եզեկ. ժդ. 9 ։
ժը Մատ. իդ. 5, 11 ։ ա Տիմ. դ. 1 ։
ժթ Հռով. ա. 32 ։
ի Գլ. ա. 3 ։
իա Եփե. ա. 4 ։
իբ ա Թես. ա. 4 ։
իգ Ղուկ. ա. 75 ։ ա Պետ. ա. 2 ։

Յամի Տեառն 54

ա Յով. ժէ. 22 ։ ա Թես. բ. 12 ։ ա Պետ. ե. 10 ։
բ ա Կոր. ժզ. 13 ։ Փիլ. դ. 1 ։
գ ա Կոր. ժա. 2 ։ Գլ. գ. 6 ։
դ Գլ. ա. 1, 2 ։
ե ա Յով. դ. 10 ։ Յայտ. ա. 5 ։
զ ա Պետ. ա. 3 ։
է ա Կոր. ա. 8 ։ ա Թես. գ. 13 ։ ա Պետ. ե. 10 ։

ա Եփե. զ. 19 ։ Կող. դ. 3 ։ ա Թես. ե. 25 ։
բ Հռով. ժե. 31 ։
գ Գոր. իը. 24 ։ Հռով. ժ. 16 ։
* Կամ հաւատարմութիւն
դ ա Կոր. ա. 9 ։ ա Թես. ե. 24 ։
ե Յով. ժէ. 15 ։ բ Պետ. բ. 9 ։
զ բ Կոր. է. 16 ։ Գաղ. ե. 10 ։
է ա Մն. իթ. 18 ։
ը Հռով. ժզ. 17 ։ Հմր 14 ։ ա Տիմ. զ. 5 ։ բ Յով. 10 ։
թ ա Կոր. ե. 11, 13 ։
ժ ա Թես. դ. 11 ։ ե. 14 ։ Հմր 11, 12, 14 ։
ժա Գլ. բ. 14 ։
ժբ ա Կոր. դ. 16 ։ ժա. 1 ։ ա Թես. ա. 6, 7 ։
ժգ ա Թես. բ. 10 ։
ժդ Գոր. ժը. 3 ։ ի. 34 ։ բ Կոր. ժա. 9 ։ ա Թես. բ. 9 ։
ժե ա Կոր. թ. 6 ։ ա Թես. բ. 6, 7 ։
ժզ Հմր 7 ։
ժէ Ծն. գ. 19 ։ ա Թես. դ. 11 ։
ժը Հմր 6 ։

Յամի Տեառն 65

րէն՝ յաւիտենական կենաց համար ։
17 Բայց յաւիտենական Թագաւո-
րին՝ որ անեղծ ու աներեւոյթ է ,
մի միայն Աստուծոյն՝ փառք
ու պատիւ յաւիտեանս յաւիտե-
նից . ամէն ։
18 Աս պատուէրը կ'աւանդեմ քեզի՝
իմ որդեակս Տիմոթէոս , քու վը-
րայովդ առաջուց եղած մարգարէ-
ութիւններուն համեմատ , որ ա-
նոնցմով պատերազմիս գան բարի
19 պատերազմը , Եւ ունենաս հա-
ւատք ու մաքուր խղճմտանք , որն
որ մէկ քանիները իրենցմէ մէկդի
ձգելով՝ նաւաբեկութիւն կրեցին
20 հաւատքին կողմանէ . Որոնցմէ են
Հիմենոսը ու Աղեքսանդրոսը ,
որոնք ես Սատանային մատնեցի ,
որ սորվին հայհոյութիւն չընել ։

ԳԼ . Բ

1 Կը յորդորէ աղօթք ու գոհութիւն մատուցանել ամէն մարդոց համար , և ասոր պատճառն ալ յառաջ կը բերէ . 9 կը ցուցնէ թէ կնիկները ինչո՛վ զարդարուելու են . 12 թէ անոնց թոյլտուութիւն չկայ սորվեցընելու . 15 և թէ պիտի փրկուին որդեծնութեամբ՝ թէ որ հաւատքի մէջ կենան ։

1 Արդ՝ կ'աղաչեմ՝ ամէն բանէն ա-
ռաջ՝ աղօթք ընել , խընդ-
րուածք , աղաչանք , գոհութիւն՝
2 ամէն մարդոց համար . Մանաւանդ
թագաւորներուն և բոլոր իշխա-
նաւորներուն համար . որ խաղաղ
ու հանդարտ կեանք վարենք՝ բոլո-
րովին աստուածպաշտութիւնով ու
3 պարկեշտութիւնով ։ Ինչու որ ան
է աղէկը ու ընդունելին մեր Փրկիչ
4 Աստուծոյն առջեւ . Որ կ'ուզէ թէ
ամէն մարդիկ փրկուին՝ ու ճշմար-
5 տութիւնը ճանչնալու գան ։ Քան-
զի մէկ Աստուած մը կայ , ու մէկ
միջնորդ մը Աստուծոյ ու մարդոց
մէջը՝ Քրիստոս Յիսուս մարդը .
6 Որ իր անձը ամենուն տեղը փրկանք
տուաւ՝ իրատենին վկայութիւն
7 ըլլալու . Որ ես անոր քարոզիչ ու
առաքեալ դրուեցայ , (ճշմարիտ
կ'ըսեմ Քրիստոսով՝ սուտ չեմ
խօսիր , ) Հեթանոսներուն վար-
դապետ եղայ հաւատքով ու ճշմար-
8 տութիւնով ։ Արդ՝ կ'ուզեմ որ
էրիկ մարդիկ ամէն տեղ աղօթք
ընեն՝ սուրբ ձեռքեր վերցընելով
առանց բարկութեան ու երկմտու-
9 թեան ։ Նոյնպէս ալ կնիկները
վայելուչ հագուստով , ամօթխա-
ծութեամբ և պարկեշտութեամբ
ինքզինքնին զարդարեն . չէ՛ թէ հիւ-
սուածքներով՝ կամ ոսկիով՝ կամ
մարգարիտներով՝ կամ մեծածախ
10 հանդերձներով . Հապա բարի
գործքերով՝ ինչոր որ կը վայլէ
աստուածպաշտութիւնը դաւանող
11 կնիկներուն ։ Կնիկ մարդը թող
սորվի լռութեամբ՝ ամէն հնազան-
12 դութիւնով ։ Բայց կնիկ մարդու
հրաման չեմ տար սորվեցընելու .
ո՛չ ալ էրիկ մարդուն իշխելու ,
13 հապա լուռ կենալու ։ Ինչու որ
առաջ Ադամը ստեղծուեցաւ , ետքը
14 Եւան ։ Եւ Ադամը չխա-
բուեցաւ , հապա կինը խաբուե-
15 ցաւ՝ ու յանցանք գործեց . Սակայն
պիտի փրկուի անիկայ որդեծնու-
թեամբ , թէ որ կենան հաւատքի
և սիրոյ ու սրբութեան մէջ պար-
կեշտութիւնով ։

ԳԼ . Գ

1 Կը ցուցնէ թէ եպիսկոպոսները՝ սարկաւագները ու անոնց կնիկները ինչ վարմունքի տէր ըլլալու են , 14 և թէ ի՛նչ նպատակով ինքը աս բաները գրեց Տիմոթէոսին . 15 կը խօսի եկեղեցիին վրայով՝ և անոր մէջը քարոզուած ու ընդունուած սուրբ վարդապետութեանը վրայով ։

1 Աս խօսքը հաւատարիմ է . Թէ
որ մէկը եպիսկոպոսութեան կը
ցանկայ՝ աղէկ գործի կը ցանկայ ։
2 Ուստի պէտք է եպիսկոպոսին ա-
նարատ ըլլալ , մէկ կնկան մը էրիկ ,
զգաստ , խոհեմ , պարկեշտ , հիւ-
3 րասէր , սորվեցընող . Ո՛չ գինե-
մոլ , ո՛չ զարնող , հապա հան-
դարտ , ո՛չ կռուող , ո՛չ արծա-
4 թասէր . Որ իր տանը աղէկ վերա-
կացութիւն ընող ըլլայ , իր զա-
ւակները հնազանդութեան մէջ պա-
հելով բոլոր ծանրաբարոյութեամբ ։
5 ( Հապա թէ որ մէկը իր տանը
վերակացութիւն ընելը չգիտնայ ,
ի՞նչպէս Աստուծոյ եկեղեցիին հո-
6 գաբարձու պիտի ըլլայ . ) Ո՛չ ալ
նորահաւատ ըլլայ . որ չըլլայ թէ
հպարտանալով Սատանային դա-
տապարտութեանը մէջ իյնայ ։
7 Հապա պէտք է անոր դուրսէն ե-
ղողներէն ալ բարի վկայութիւն
ունենալ , որ չըլլայ թէ նախատին-
քի մէջ ու Սատանային որոգայ-
թին մէջը իյնայ ։
8 Նոյնպէս ալ սարկաւագները ըլ-
լան ծանրաբարոյ , ոչ երկլեզու ,
ո՛չ գինեսէր , ո՛չ անարգ շահա-
9 խնդրութեան ետեւէ եղող . Հաւա-
տքին խորհուրդը պահեն մա-
10 քուր խղճմտանքով ։ Եւ ասոնք
ալ առաջ թող փորձուին , ետքը՝
թէ որ անմեղադրելի գտնուին ,
սարկաւագութեան պաշտօնը կա-
11 տարեն ։ Անանկ ալ անոնց կնիկ-
ները՝ ծանրաբարոյ ըլլան , ո՛չ չա-
րախօս , հապա զգաստ , ամէն բանի
12 մէջ հաւատարիմ ։ Սարկաւագ-
ները մէկ կնկան մը էրիկ ըլլան .

Սաղ. ժ. 16 ։ Ճիտ . 13 ։ Դան. է. 14 ։ Գլ. զ. 15 , 16 ։ Հռով . ա . 22 ։ Յօհ. ա. 18 ։ Եբր . ժա . 27 ։ ա Յօհ . դ . 12 ։ Հռով . ժզ . 27 ։ Յուդ . 25 ։ Ոմանք՝ միայն իմաստունն ։ Մն . իթ . 11 ։ Գլ . զ . 13 , 14 , 20 ։ բ Տիմ . բ . 2 ։ Գլ . դ . 14 ։ Գլ . զ . 12 ։ բ Տիմ . բ . 3 ։ գ . 7 ։ Գլ . գ . 9 ։ Գլ . զ . 9 ։ բ Տիմ . բ . 17 ։ բ Տիմ . դ . 14 ։ ա Կոր . ե . 5 ։ Գոր . ժգ . 45 ։

Եզր . զ . 10 ։ Երեմ . իթ . 7 ։ Հռով . ժգ . 1 ։ Հռով . ժբ . 2 ։ Գլ . ե . 4 ։ Գլ . ա . 1 ։ բ Տիմ . ա . 9 ։ Եզեկ . ժը . 23 ։ Յօհ . գ . 16 , 17 ։ Տիտ . բ . 11 ։ բ Պետ . դ . 9 ։ Յօհ . ժէ . 3 ։ բ Տիմ . բ . 25 ։ Հռով . գ . 29 , 30 ։ ժ . 12 ։ Գաղ . գ . 20 ։ Եբր . ը . 6 ։ թ . 15 ։ Մատ . ի . 28 ։ Մար . ժ . 45 ։ Եփե . ա . 7 ։ Տիտ . բ . 14 ։ Հռով . ե . 6 ։ Գաղ . դ . 5 ։ Եփե . ա . 10 ։ գ . 5 ։ Տիտ . ա . 3 ։ ա Կոր . ա . 6 ։ բ Թես . ա . 10 ։ բ Տիմ . ա . 8 ։ Եփե . գ . 7 , 8 ։ բ Տիմ . ա . 11 ։ Հռով . թ . 1 ։ Ոմանք՝ ... ։ Հռով . ժա . 13 ։ ժե . 16 ։ Գաղ . ա . 16 ։ Մաղ . ա . 11 ։ Յօհ . դ . 21 ։ Սաղ . ճխ . 2 ։ Ես . ա . 15 ։ Պետ . գ . 3 ։

Յամի Տեառն 65

Տիտ . գ . 4 ։ ա Կոր . ժդ . 34 ։ Եփե . ե . 24 ։ Ծն . ա . 27 ։ ա Կոր . ժա . 8 , 9 ։ Ծն . գ . 6 ։ բ Կոր . ժա . 3 ։

Գլ . ա . 15 ։ Գործ . ի . 28 ։ Փիլ . ա . 1 ։ Եփե . դ . 12 ։ Տիտ . ա . 6 ։ Գլ . ե . 9 ։ բ Տիմ . բ . 24 ։ Հմր . Տիտ . ա . 7 ։ բ Տիմ . բ . 24 ։ Պետ . ե . 2 ։ Տիտ . ա . 6 ։ Ես . ժդ . 12 ։ Գործ . իբ . 12 ։ ա Կոր . ե . 12 ։ Թես . դ . 11 ։ Գլ . զ . 9 ։ բ Տիմ . բ . 26 ։ Գոր . զ . 3 ։ Տիտ . ա . 9 ։ Եզեկ . իդ . 21 ։ Գլ . ա . 19 ։ Տիտ . բ . 3 ։

որ իրե՛նց զաւակներուն ու իրենց
տանը աղէկ վերակացութիւն ընող
13 ըլլան ։ Քանզի անոնք որ սարկա-
ւագութեան պաշտօնը աղէկ կը
կատարեն , բարի աստիճան մը ի-
րենց կը շահին՝ ու Քրիստոս Յի-
սուսի վրայ եղած հաւատքին մէջ
շատ համարձակութիւն ։
14 Աս բաները կը գրեմ քեզի , յու-
15 սալով մօտերս քեզի գալ ։ Բայց
եթէ ուշանալու ըլլամ , որ գիտ-
նաս թէ՝ ինչպէս պէտք է քեզի
Աստուծոյ տանը մէջ պտըտիլ ,
որ կենդանի Աստուծոյ եկեղեցին
է , ճշմարտութեան սիւնը ու հաս-
16 տատութիւնը ։ Եւ յայտնապէս
մեծ է աստուածպաշտութեան
խորհուրդը . Աստուած մարմնով
յայտնուեցաւ , Հոգիով արդա-
րացաւ , հրեշտակներուն երեւցաւ ,
հեթանոսաց մէջ քարոզուեցաւ ,
աշխարհի մէջ հաւատացուեցաւ ,
փառքով համբարձաւ ։

## ԳԼ . Դ

1 Առաքեալը կը նախազգուշէ թէ ետքի ժամա-
նակները ոմանք՝ հաւատքէն պիտի մոլորին . 6
զանազան պատուէրներ կու տայ Տիմոթէոսին ,
որ իրեն յանձնուած պաշտօնին մէջ թերու-
թիւն մը չընէ ։

1 Բայց Հոգին յայտնի կ'ըսէ ,
թէ ետքի ատենները մէկ
քանիները հաւատքէ պիտի ապըս-
տամբին , և մոլորեցուցիչ ոգի-
ներու , ու դիւաց ուսմունքնե-
րու ուշադրութիւն պիտի տան ,
2 Ստախօսներուն կեղծաւորու-
թեամբը , որոնց խղճմտանքը խան-
3 ձուած է , Որոնք ամուսնանալէն
պիտի արգիլեն , ու եւ պիտի
պահեն կերակուրներէն՝ որ Աս-
տուած ստեղծեր է որ հաւատա-
ցեալները և ճշմարտութիւնը ճանչ-
ցողները գոհութեամբ վայելեն ։
4 Ինչու որ Աստուծոյ ամէն ստեղ-
ծածը բարի է՝ ու մերժելու բան մը
չկայ , թէ որ գոհութեամբ ըն-
5 դունուի . Քանզի Աստուծոյ խօս-
քովը ու աղօթքով կը սրբուի ։
6 Աս բաները եղբայրներուն յիշեցը-
նելով՝ Յիսուս Քրիստոսի բարի
պաշտօնեայ մը պիտի ըլլաս , ու
պիտի սնանիս հաւատքին խօսքե-
րովը և ան բարի վարդապետու-
թիւնովը , որուն հետեւող եղար ։
7 Բայց պիղծ ու պառաւական ա-
ռասպելներէն ետ կեցիր . և քու
անձդ աստուածպաշտութեան
8 վարժեցուր . Ինչու որ մարմնին
վարժութիւնը քիչ բանի օգտա-
կար է , բայց աստուածպաշտու-
թիւնը ամէն բանի օգտակար է , որ
թէ ներկայի և թէ ապառնի կենաց
9 խոստումները ունի ։ Աս խօսքը
հաւատարիմ է՝ և բոլորովին ըն-
10 դունելու արժանի ։ Ինչու որ
բուն ասոր համար կ'աշխատինք՝
ու նախատինք կը կրենք . վասն
զի կենդանի Աստուծոյ յուսացեր
ենք , որ ամէն մարդոց Փրկիչն
է , մանաւանդ հաւատացեալնե-
11 րուն ։ Աս բաները պատուիրէ
12 ու սորվեցուր ։ Չըլլայ որ մէկը
քու մանկութիւնդ անարգէ . հա-
պա դուն օրինակ եղիր հաւատա-
ցեալներուն՝ խօսքով , վարմուն-
քով , սիրով , հաւատքով , մաք-
13 րութեամբ ։ Մինչև որ ես գամ՝
մի'տք դիր կարդալու , յորդորե-
14 լու , սորվեցընելու ։ Անհոգ մի'
ըլլար քու վրադ եղած պարգեւին
վրայով , որ մարգարէութեամբ
քեզի տրուեցաւ՝ Երէցներուն ձեռ-
15 քերը վրադ դրուելովը ։ Ա-
տոնց վրայ խորհէ՝ ու ատոնց մէջը
պարապէ , որ քու յառաջադիմու-
թիւնդ ամենուն յայտնի ըլլայ ։
16 Զգուշացիր քու անձիդ ու վար-
դապետութեանը՝ ու միշտ ատոնց
մէջը կեցիր . քանզի այդպէս ընե-
լովդ քեզ ալ պիտի ապրեցընես ,
ու անոնք ալ՝ որ քեզի մտիկ
կ'ընեն ։

## ԳԼ . Ե

1 Կանոններ կու տայ յանդիմանելու վրայով . 3
որբեւարիներու 17 և ծերերու վրայով . 23
յատուկ պատուէր մըն ալ կու տայ Տիմոթէո-
սին առողջութեանը վրայով . 24 կը ծանուցա-
նէ թէ ոմանց մեղքերը իրենցմէ առաջ դա-
տաստանի կ'երթան , և ոմանց մեղքերը ի-
րենց ետեւէն կու գան ։

1 Ծերը սաստիկ մի՛ յանդիմաներ ,
հապա հօր պէս յորդորէ զա-
նիկա . երիտասարդները՝ եղբայրներու
2 պէս , Պառաւները՝ մայրերու պէս .
դեռահասակ կնիկները՝ քոյրերու
պէս՝ ամէն կերպ մաքրութիւնով ։
3 Որբեւարիները պատուէ՝ անոնք որ
4 ճշմարտապէս որբեւարի են ։ Հա-
պա թէ որ մէկ որբեւարի մը զա-
ւակներ կամ թոռներ ունենայ ,
թող անոնք առաջ սորվին իրենց
տանը մէջ որդիական գութ ցու-
ցընել , ու փոխարէն հատուցանել
իրենց ծնողացը . Ինչու որ ան
է ընդունելի Աստուծոյ առջեւը ։
5 Բայց ան որ ճշմարտապէս որ-
բեւարի է՝ ու մինակ մնացած , իր
յոյսը Աստուծոյ վրայ դրած է , և
գիշեր ցորեկ աղօթքի ու աղաչան-
6 քի կը պարապի . Բայց փափկասէր
որբեւարին՝ կենդանւոյն մեռած է ։
7 Եւ աս բաները պատուիրէ որ ան-
8 արատ ըլլան ։ Բայց թէ որ մէկը
իրեններուն՝ ու մանաւանդ իր ըն-

Յամի Տեառն 65

Տես Մատ. իե. 21 ։ Եփես. բ. 21. 22 ։ բ Տիմ. բ. 20 ։ Յով. ա. 14 ։ ա Յով. ա. 2 ։ Մատ. գ. 16 ։ Յով. ա. 32. 33 ։ ժե. 26 ։ ժզ. 9 ։ Հռով. ա. 4 ։ ա Պետ. գ. 18 ։ ա Յով. ե. 6. 7 ։ Մատ. իը. 2 ։ Մար. ժզ. 5 ։ Ղուկ. բ. 13 ։ իդ. 4 ։ Յով. ի. 12 ։ Եփես. գ. 10 ։ ա Պետ. ա. 12 ։ Գործ. ժ. 34 ։ ժգ. 46. 48 ։ Գաղ. բ. 8 ։ Եփես. գ. 5. 6. 8 ։ Հռով. ժ. 18 ։ Կող. ա. 27 ։ 28 ։ Գղ. բ. 7 ։ Կող. ա. 6. 23 ։ Ղուկ. իդ. 51 ։ Գործ. ա. 19 ։ ա Պետ. գ. 22 ։ Յով. ժզ. 13 ։ բ Թես. բ. 3 ։ բ Տիմ. գ. 1 ։ բ Պետ. գ. 3 ։ ա Յով. բ. 18 ։ Յուդ. 4. 18 ։ ա Պետ. ա. 20 ։ բ Տիմ. գ. 13 ։ բ Պետ. բ. 1 ։ Յայտ. ժզ. 14 ։ Դան. ժա. 35. 37. 38 ։ Յայտ. թ. 20 ։ Մատ. է. 15 ։ Հռով. ժզ. 18 ։ բ Պետ. բ. 3 ։ Եփես. դ. 19 ։ ա Կոր. է. 28. 36. 38 ։ Կող. բ. 20. 21 ։ Եբր. ժգ. 4 ։ Հռով. ժդ. 3. 17 ։ ա Կոր. ը. 8 ։ Հռով. ժդ. 6 ։ ա Կոր. ժ. 30 ։ Ծն. ա. 29 ։ թ. 3 ։ Հռով. ժդ. 14. 20 ։ ա Կոր. ժ. 25 ։ Տիտ. ա. 15 ։ բ Տիմ. գ. 14. 15 ։ Գղ. ա. 4 ։ գ. 20 ։ բ Տիմ. բ. 16. 23 ։ դ. 4 ։ Տիտ. ա. 14 ։ Եբր. ե. 14 ։ ա Կոր. ը. 8 ։ Կող. բ. 23 ։ Գղ. գ. 6 ։

Յամի Տեառն 65

Սաղ. լէ. 4 ։ ձզ. 11 ։ Ճժբ. 2. 3 ։ Ճխե. 19 ։ Մատ. զ. 33 ։ ժթ. 29 ։ Մար. ժ. 30 ։ Հռով. ը. 28 ։ Գղ. ա. 15 ։ ա Կոր. դ. 11. 12 ։ Գղ. գ. 17 ։ Սաղ. լգ. 6 ։ Ճէ. 2. 6 ։ Գղ. գ. 2 ։ ա Կոր. ժգ. 11 ։ Տիտ. բ. 15 ։ Տիտ. բ. 7 ։ ա Պետ. ե. 3 ։ բ Տիմ. ա. 6 ։ Գղ. ա. 18 ։ Գործ. գ. 6 ։ ը. 17 ։ ժգ. 3 ։ ժթ. 6 ։ Գղ. ե. 22 ։ բ Տիմ. ա. 6 ։ Կամ ամէն բանի մէջ ։ Գործ. ի. 28 ։ Եզեկ. լգ. 9 ։ Հռով. ժա. 14 ։ ա Կոր. թ. 22 ։ Յակ. ե. 20 ։

Ղև. ժթ. 32 ։

բ Հռ 5. 16 ։

Տես Ծն. խե. 10. 11 ։ Մատ. ժե. 4 ։ Եփես. զ. 1. 2 ։ Գղ. բ. 3 ։ ա Կոր. է. 32 ։ Գործ. իզ. 7 ։ Ղուկ. բ. 37 ։ ժը. 1 ։ Յակ. ե. 5 ։ Գղ. ա. 3 ։ դ. 11 ։ զ. 17 ։ Ծն. ծը. 7 ։ Գաղ. զ. 10 ։

Ցամ Տեառն
65

տանեացը հոգ չտանիր , եանիկայ
հաւատքը ուրացած է , ու անհա-
9 ւատէ մըն ալ գէշ է ։ Որբեւարին
որբեւարիներուն կարգը թող սե-
պուի , որ վաթսուն տարուընէ պա-
կաս չէ , և մէկ էրկան մը կնիկ եղած ,
10 Բարի գործքերով վկայուած . թէ
զաւակներ մեծցուցած ըլլայ , թէ
հիւրեր ընդունած ըլլայ , թէ սուր-
բերուն ոտքերը լուացած ըլլայ ,
թէ նեղեալներուն օգնութիւն ըրած
ըլլայ , թէ ամէն տեսակ բարեգոր-
ծութեան մէջ յարատեւած ըլլայ ։
11 Բայց ջեռահասակ որբեւարիները
մերժէ . քանզի երբոր Քրիստոսի
դէմ յանդգնելով հեշտասիրութեան
անձնատուր կ'ըլլան , ամուսնանալ
12 կ'ուզեն . Եւ դատապարտութիւն
կ'ընդունին . ինչու որ առջի հա-
13 ւատքնին մէկդի ձգեցին ։ Նաև ծոյլ
ըլլալ կը սորվին , տունէ տուն պտը-
տողներ . և ոչ միայն ծոյլ , հապա
շատախօսներ , ու հետաքրքիրներ .
և անպատեհ բաներ կը խօսին ։
14 Ուստի կ'ուզեմ որ ջեռահասակ
կնիկները ամուսնանան , զաւակներ
ծնանին , տնաշէն ըլլան , ու նա-
խատանաց պատճառ չտան հակա-
15 ռակորդին ։ Քանզի արդէն ոմանք
Սատանային ետեւէն երթալով խոտո-
16 րեցան ։ Թէ որ հաւատացեալ էրիկ
մարդ մը կամ կնիկ մը որբեւարիներ
ունենայ , թող օգնութիւն ընէ
անոնց , և եկեղեցին չծանրաբեռնի ,
որ ճշմարտապէս որբեւարիներուն
օգնութիւն ընէ ։
17 Աղէկ վերակացութիւն ընող ե-
րէցները կրկին պատուոյ արժանի
թող սեպուին . մանաւանդ անոնք՝
որ կ'աշխատին խօսքը քարոզելով ու
18 սորվեցընելով ։ Ինչու որ գիրքը
կ'ըսէ թէ Կալի մէջ աշխատող ե-
զին դունչը չկապես . և թէ Մշա-
19 կը իր վարձքին արժանի է ։ Երէցի
վրայով ամբաստանութիւն մի՛ ըն-
դունիր , բայց միայն երկու կամ
20 իրեք վկաներով ։ Անոնք որ մեղք
կը գործեն , ամենուն առջեւ յան-
դիմանէ , որ ուրիշներն ալ վախ-
21 նան ։ Վկայութիւն կը դնեմ Աս-
տուծոյ առջեւ՝ և Քրիստոս Յիսու-
սի , ու ընտրեալ հրեշտակներուն ,
որ աս բաները պահես առանց նա-
խապաշարման , բան մը աչառու-
22 թեամբ չընելով ։ Շուտով մէկուն
վրայ ձեռք չդնես , և ուրիշներուն
մեղացը հաղորդ չըլլաս . դուն քեզ
մաքուր պահէ ։
23 Ասկէ ետեւ լոկ ջուր չխմե՛ս . հապա
քիչ մըն ալ գինի գործածէ ստամոքսիդ ու յաճախ հիւանդու-
թիւններուդ համար ։
24 Կան մարդիկ՝ որ իրենց մեղքերը
յայտնի են , ու առաջուց դատաս-
տանի հասած . և կան՝ որ իրենց
25 ետեւէն կ'երթան ։ Նմանապէս ալ մանաւանդ
բարի գործքերը յայտնի են . ու
անոնք որ ուրիշ կերպ բան մըն են ,
չեն կրնար ծածուկ մնալ ։

## ԳԼ. Զ

1 Կը սորվեցընէ թէ ծառաները ինչ պարտա-
ւորութիւն ունին . 3 և թէ պէտք չէ նորաձեւ
վարդապետներուն հետեւիլ . 6 թէ աստուած-
պաշտութիւնը մեծ վաստակ մըն է , 10 և ար-
ծաթսիրութիւնը ամէն չարիքներուն արմատն
է . 11 թէ Տիմոթէոս ի՛նչ բանէ փախչելու
էր , և ի՛նչ բանի ետեւէ երթալու էր , 17 և
ի՛նչ բանի վրայով հարուստներուն պատուէր
տալու էր . 20 կը պատուիրէ Տիմոթէոսին
որ ճշմարիտ վարդապետութիւնը մաքուր պա-
հէ , և պիղծ խօսքերէն ու հակառակութիւն-
ներէն հեռու կենայ ։

1 Ո՛րն ամէնը որ ծառայութեան լու-
ծի տակ են, իրենց տէրերը ամէն
պատուոյ արժանի սեպեն , որ Աս-
տուծոյ անունը ու վարդապետու-
2 թիւնը չհայհոյուի ։ Եւ անոնք որ
հաւատացեալ տէրեր ունին , թող
չարհամարհեն՝ եղբայրներ ըլլալնուն
պատճառաւը . հապա աւելի ծա-
ռայութիւն ընեն , ինչու որ անոնք
հաւատացեալ են ու սիրելի , որոնք
բարերարութիւն ընելու մէջ մաս-
նակից են . Աս բաները սորվեցուր՝
3 ու յորդորէ ։ Եթէ որ մէկը ուրիշ
կերպ բան մը սորվեցընէ , ու մտիկ
չընէ մեր Տէրոջը Յիսուս Քրիստոսին
ողջամիտ խօսքերուն , և անոր վար-
դապետութեանը՝ որ աստուած-
4 պաշտութեան համեմատ է , Անանկը
հպարտացած է ու բան մը չգիտեր .
հապա վէճերով ու հակառակու-
թիւններով ախտացած է . որոնց-
մէ կ'ըլլայ նախանձ , կռիւ , հայ-
հոյութիւններ , գէշ կասկածներ ,
5 Մտքով ապականած ու ճշմար-
տութենէն հեռացած մարդոց էզը-
րաբանութիւնները , որոնք աս-
տուածպաշտութիւնը շահավաճա-
ռութիւն մը կը սեպեն . Անանկ-
6 ներէն մէկդի կեցիր ։ Սակայն
աստուածպաշտութիւնը բաւակա-
նութիւնով մէկտեղ՝ մեծ շահավա-
7 ճառութիւն մըն է ։ Ինչու որ
բան մը չբերինք աշխարհ , ու յայտ-
նի է որ չենք կրնար անկէ բան մը
8 տանիլ ։ Հապա կերակուր ու
հանդերձ ունենալով , անոնցմով
9 բաւականանանք ։ Բայց անոնք
որ հարստանալ կ'ուզեն , կ'իյնան
փորձութեան ու որոգայթի՝ և
շատ յիմարական ու վնասակար
ցանկութիւններու մէջ , որոնք
սատակումի ու կորստեան մէջ
10 կ'ընկղմեն մարդիկը ։ Ինչու որ
ամէն չարութիւններուն արմատը
արծաթսիրութիւնն է . որուն մէկ

Յամի Տեառն 65

ա բ Տիմ. բ. 22։
ե բ Օր. լգ. 1։ բ Տիմ. գ. 17։
լ ա Կոր. Թ. 25. 26։ Գղ. ա. 18։ բ Տիմ. դ. 7։
ա Փիլ. դ. 12. 14։ Հմր 19։
ղ Եբր. ժ. 23։
ղ Գղ. ե. 21։
Լ բ Օր. լբ. 39։ աԹագ. բ. 6։ Յօհ. ե. 21։
ա Մատ. իէ. 11։ Յօհ. ժը. 37։ Յայտ. ա. 5։ գ. 14։
ա Փիլ. ա. 6. 10։ աԹես. գ. 13։ ե. 23։
Լ Գղ. ա. 11. 17։
ա Յայտ. ժէ. 14։ ժԹ. 16։
բ Գղ. ա. 17։
յ Ել. լգ 20։ Յօհ. զ. 46։

քանիները անձնանուէր ըլլալով՝
հաւատքէն մոլորեցան, ու ինք-
զինքնին շատ ցաւերու մէջ ձգեցին։
11 Բայց դուն ո՛վ մարդ Աստու-
ծոյ՝ փախիր աս բաներէն, ու դնա՛
արդարութեան՝ աստուածպաշ-
տութեան՝ հաւատքի՝ սիրոյ՝ համ-
բերութեան՝ ու հեզութեան ե-
12 տեւէն. Պատերազմէ՛ հաւատքին
բարի պատերազմը, բռնէ՛ յաւի-
տենական կեանքը՝ որուն որ կան-
չուեցար, և շատ վկաներու առջև
դաւանեցար բարի դաւանութիւ-
13 նը։ Կը պատուիրեմ քեզի Աս-
տուծոյ առջևը՝ որ կենդանի կ՚ընէ
բոլորը, և Քրիստոս Յիսուսի առ-
ջևը՝ որ Պոնտացի Պիղատոսին
առջին վկայեց բարի դաւանութիւ-
14 նը, Որ դուն այն պատուէրը ամբիծ
անարատ պահես՝ մինչև մեր Տէ-
րոջը Յիսուս Քրիստոսին յայտնու-
15 թիւնը. Որն որ իր ատենին պիտի
ցուցընէ՝ Երանելին ու մի միայն
Հզօրը, Թագաւորներուն Թագա-
16 ւորը ու տէրերուն Տէրը. Որ ինքը
մինակ ունի անմահութիւն՝ ան-
մերձենալի լոյսի մէջ բնակած. զորն
որ մարդիկներէն մէկը չտեսաւ, ոչ
ալ տեսնելու կարող է, որուն
պատիւ և զօրութիւն յաւիտեանս.
ամէն։
17 Աս աշխարհիս մէջ հարուստ ե-
ղողներուն պատուէր տուր՝ որ չը-
հպարտանան, և անստոյգ հարըս-
տութեան վրայ յոյսերնին չդնեն,
հապա կենդանի Աստուծոյ վրայ՝
որ ամէն բանը մեզի առատօրէն
18 կու տայ վայելելու, Բարիք գոր-
ծեն, բարի գործքերով հարստա-
նան, Առատաձեռն, և [illegible]
19 [illegible] հաղորդ ըլլան. Բարի
հիմ դանձեն անձերնուն՝ հանդեր-
ձեալին համար, որ ճշմարիտ
կեանքը ձեռք ձգեն։
20 Ո՛վ Տիմոթէոս՝ քեզի [illegible]
աւանդը պահէ, փախչելով պիղծ
ունայնաբանութիւններէն, և սուտ-
անուն գիտութեան հակառակու-
21 թիւններէն, Որն որ մէկ քանինե-
րը դաւանելով՝ հաւատքէն մոլո-
րեցան։ Շնորհքը քու հետդ ըլ-
լայ. ամէն։

Յամի Տեառն 65

Եփե. գ. 21։ Փիլ. դ. 20։ Յուդ. 25։ Յայտ. ա. 6։ դ. 11։ ե. 12։
Առակ. իգ. 5։
Յոբ. լա. 24։ Սաղ. ծբ. 7։ կբ. 10։ Մար. ժ. 24։ Ղու. ժբ. 21։
ա Թես. ա. 9։ Գղ. դ. 15։ գ. 10։
Գոր. ժդ. 16։ ժէ. 25։
Ղու. ժբ. 21։ Գղ. ե. 10։ Տիտ. գ. 8։ Յակ. բ. 5։
Հռով. ժբ. 13։
Գաղ. զ. 6։ Եբր. ժգ. 16։

Մատ. զ. 20։ ժԹ. 21։ Ղու. ժբ. 33։ ժզ 9։ Է Հմր 12։ Ա Տիմ. ա. 14։ Տիտ. ա. 9։ Յայտ. գ 3։ Է Գղ. ա. 4, 6։ դ. 7։ Բ Տիմ. բ. 14, 16, 23։ Տիտ. ա. 14։ գ. 9։ Ը Գղ. ա. 6, 19։ Բ Տիմ. բ. 18։

ԵՐԿՐՈՐԴ ԹՈՒՂԹ

# ՊՕՂՈՍԻ ԱՌԱՔԵԼՈՅՆ

## ԱՌ ՏԻՄՈԹԷՈՍ

Յամի Տեառն 66

ա Կոր. ա. 1։
Եփե. գ. 6։ Տիտ. ա. 2։ Եբր. Թ. 15։
ա Տիմ. ա. 2։
Հռով. ա. 8։ Եփե. ա 16։
Գոր. իբ. 3։ իգ. 1։ իդ. 14։ իէ. 23։ Հռով. ա 9։ Գաղ. ա. 14։

### ԳԼՈՒԽ Ա

1 Պօղոս կը յիշէ իր սէրը Տիմոթէոսի վրայ. և այն զուտ հաւատքը որ Տիմոթէոս՝ իր մայրը ու մեծ մայրը ունէին. 6 կը յորդորէ Տիմոթէոսը որ իր վրայ եղած Աստուծոյ շնորհքը արծարծէ, 8 որ հալածման մէջ համբերող ըլլայ, 13 ու ամուր բռնէ իրմէն սորված վարդապետութեան եղանակը ու ճշմարտութիւնը. 15 կը յիշէ Փիգեղոսը և Հերմոգինէսը՝ եւ, ու Ոնեսիփորոսին վրայով բարի վկայութիւն կու տայ։

1 Պօղոս՝ Յիսուս Քրիստոսի առա-
քեալը Աստուծոյ կամքովը՝
կենաց խոստմունքին պէս, որ
2 Քրիստոս Յիսուսով է. Տիմո-
թէոս իմ սիրելի որդիիս՝ շնորհք,
ողորմութիւն և խաղաղութիւն
Հօր Աստուծմէն, ու Քրիստոս Յի-
սուս մեր Տէրոջմէն։
3 Շնորհակալ եմ Աստուծոյ՝
զորն որ կը պաշտեմ իմ նախնիք-
ներէս մաքուր խղճմտանքով.
(Դերբոր անպակաս քեզ իմ ա-
ղօթքներուս մէջ կը յիշեմ գիշեր
4 ու ցորեկ, Ցանկալով քեզ տես-
նել, ու միտք բերելով քու ար-
ցունքներդ, որ ուրախութիւնով
5 լեցուիմ.) Մտածելով քու վը-
րադ եղած անկեղծ հաւատքը, որ
առաջ քու մեծ մօրդ Լաւոդային
ու քու մօրդ Եւնիկէին վրայ բը-
նակեցաւ, և համոզուած եմ՝ որ
6 քու վրադ ալ կայ։ Անոր համար
քու միտքդ կը ձգեմ՝ որ արծար-
ծես Աստուծոյ պարգևը, որ քեզի
տրուած է իմ ձեռքերուս քու վրայ
7 դրուելովը։ Ինչու որ Աստուած
մեզի երկչոտութեան հոգի չտուաւ,
հապա զօրութեան՝ ու սիրոյ՝ և
8 զգաստութեան։ Ուստի ամօթ
մի սեպեր մեր Տէրոջը վկայու-
թիւնը, ոչ ալ զիս անոր համար

Յամի Տեառն 66

Գաղ. ա. 2։ դ. 10։
Գղ. դ. 9. 21։
ա Տիմ. ա. 5։ դ. 6։
Գոր. ժգ. 1։
ա Թես. ե. 19։ ա Տիմ. դ. 14։
Հռով. ը. 15։
Ղու. իդ. 49։ Գոր. ա. 8։
Հռով. ա. 16։
ա Տիմ. բ. 6։ Յայտ. ա. 2։
Եփե. գ. 1։ Փիլ. ա. 7։

Ցամի Տեառն 66

կ Կող. ա. 24: Գլ. դ. 5: յ ա Տիմ. ա. 1: Տիտ. գ. 4: ղ ա Թես. դ. 7: Եբր. գ. 1: ճ Հռով. գ. 20: Թ. 11: Տիտ. գ. 5: մ Հռով. ը. 28: յ Հռով. ժզ. 25: Եփե. ա. 4: գ. 11: Տիտ. ա. 2: ա Պետ. ա. 20: ն Հռով. ժզ. 26: Եփե. ա. 9: Կող. ա. 26: Տիտ. ա. 3: ա Պետ. ա. 20: շ ա Կոր. ժե. 54, 55: Եբր. բ. 14: ո Գոր. Թ. 15: Եփե. գ. 7, 8: ա Տիմ. բ. 7: Գլ. դ. 17: չ Եփե. գ. 1: Գլ. բ. 9: պ ա Պետ. դ. 19: ջ ա Տիմ. զ. 20: ռ Հմր 18: Գլ. դ. 8: ս Գլ. դ. 14: Տիտ. ա. 9: Եբր. ժ. 23: Յայտ. բ. 25: վ Հռով. բ. 20: զ. 17: ա Տիմ. ա. 10: զ. 3: տ Գլ. բ. 2: ր ա Տիմ. ա. 14: ց ա Տիմ. զ. 10: ւ Հռով. ը. 11: փ Գլ. դ. 9, 16: ք Գոր. ժթ. 10: օ Մատ. ե. 7: ա Գլ. դ. 10: բ Փիլիմ. 7: գ Գոր. իը. 20: Եփե. զ. 20: դ Հմր 8: ե բ Թես. ա. 10: Հմր 12: զ Մատ. իե. 34—40: է Եբր. զ. 10:

կապուածս . կՀապա մասնակից
եղիր աւետարանին չարչարանքնե-
րուն՝ Աստուծոյ զօրութեանը հա-
9 մեմատ . յՈր մեզ փրկեց , ղու սուրբ
կոչումով կանչեց՝ ճչէ թէ մեր
գործքերուն նայելով , մհապա իր
դիտաւորութեանը ու շնորհքին
նայելով , որ Քրիստոս Յիսուսով
մեզի տրուեցաւ յյաւիտենական
10 դարերէն առաջ . նԲայց հիմա
յայտնուեցաւ մեր Փրկչին Յիսուս
Քրիստոսին երեւնալովը . շոր մահը
խափանեց , և 'ի լոյս հանեց կեանքը
ու անմահութիւնը՝ աւետարանին
11 միջոցովը . ոՈր ես անոր քարոզիչ
ու առաքեալ դրուեցայ՝ ու հե-
12 թանոսներուն վարդապետ ։ չԱնոր
համար աս չարչարանքներն ալ
կը քաշեմ . բայց ամօթ մը չեմ
սեպեր , պինչու որ գիտեմ թէ ո-
րուն եմ հաւատացեր , և համոզուած
եմ՝ ջոր իմ քովս աւանդած բանս
13 կրնայ պահել ռմինչև ան օրը ։ սԱ-
մո՛ղջ բռնէ վան ողջամիտ խօսքե-
րուն օրինակը՝ տոր ինծմէ լսեցիր ,
րհաւատքով ու սիրով՝ որ Քրիս-
տոս Յիսուսով է ։
14 ցԱն բարի աւանդը պահէ Հո-
գւոյն Սրբոյ ձեռքովը ւոր մեր մէջը
15 բնակած է ։ Աս գիտես՝ փոր ինծմէ
երես դարձուցին քան ամէնը՝ որ
Ասիա էին , որոնցմէ են Փիգեղոսը
16 ու Հերմոգինէսը ։ օԱստուած ո-
ղորմութիւն տայ աՈնեսիփորոսին
տանը , բինչու որ շատ անգամ զիս
հանգստացուց , գու իմ շղթաս
17 դամօթ չսեպեց . Հապա երբոր
Հռովմ եկաւ , շատ ջանքով փընտ-
18 ռեց զիս՝ ու գտաւ ։ ( Տէրը իրեն
տայ՝ եոր ան օրը զՏէրոջմէն ողոր-
մութիւն գտնէ . ) էԵւ Եփեսոսի
մէջ ալ որչափ սպասաւորութիւն
որ ըրաւ ինծի , դուն անիկայ շատ
աղէկ գիտես ։

ԳԼ. Բ

1 Դարձեալ կը յորդորէ զՏիմոթէոս հաստա-
տուն ու համբերող ըլլալու , և Տէրոջը հաւա-
տարիմ պաշտօնեայի մը պէս իր պարտաւո-
րութիւնը կատարելու՝ ճշմարտութիւնը ու-
ղիղ բացատրելով , և պիղծ ու պարապ խօս-
քերէն հեռու կենալով ։ 17 Հիմենոս ու Փի-
ղետոս ։ 19 Աստուծոյ հիմը հաստատուն կը
կենայ ։ 22 Կը սորվեցընէ թէ ի՛նչ բանէ
փախչելու է , և ի՛նչ բանի հետևելու է , և
թէ Տէրոջը ծառան ի՛նչ վարք ունենալու է ։

1 սԲայց դուն իմ որդեակս՝ տզօրա-
ցիր ան շնորհքովը՝ որ Քրիս-
2 տոս Յիսուսով է ։ րԵւ ան բաները
որ ինծմէ լսեցիր շատ վկաներով՝
ցհաւատարիմ մարդոց յանձնէ ,
ւորոնք կարող ըլլան ուրիշներուն
3 ալ սորվեցընելու ։ աԱրդ՝ դուն նե-
ղութիւններու համբերէ բՔրիս-
տոս Յիսուսի բարի զինուորի մը
4 պէս ։ գՄէկ զինուորեալ մը այս
կեանքիս գործառնութիւններովը
չզբաղիր , որ զօրավարին հաճոյ ըլ-
5 լայ ։ դԵւ թէ որ մէկը մրցի , չը-
պսակուիր՝ թէ որ ըստ օրինի չը-
6 մրցի ։ եԱշխատող երկրագործին
պէտք է առաջ պտուղներէն վա-
7 յելել ։ Իմացիր ինչ որ կ'ըսեմ . Տէ-
րը քեզի իմաստութիւն տայ ամէն
8 բանի մէջ . Միտք բեր զԴաւիթի
ցեղէն եղող Յիսուս Քրիստոսը
էմեռելներէն յարութիւն առած՝
ըիմ քարոզած աւետարանիս համե-
9 մատ . թՈրուն մէջը չարագործի մը
պէս կը չարչարուիմ ժմինչև ան-
գամ կապերով . իբայց Աստուծոյ
10 խօսքը կապուած չէ ։ լՈւստի
ամէն բանի կը համբերեմ ընտ-
րեալներուն համար , խոր անոնք ալ
հասնին ան փրկութեանը , որ Քը-
րիստոս Յիսուսով է յաւիտենա-
11 կան փառքով ։ ծԱս խօսքը հա-
ւատարիմ է . կվասն զի թէ որ
անոր հետը մեռանք , անոր հետն
12 ալ պիտի ապրինք . հթէ որ համ-
բերենք , անոր հետն ալ պիտի
թագաւորենք . ձթէ որ ուրանք ու-
րանանք , ինքն ալ մեզ պիտի ու-
13 րանայ . ղթէ որ չհաւատանք ,
. ինքը հաւատարիմ կը մնայ , ճիր
14 անձը չկրնար ուրանալ ։ Աս բանե-
րը անոնց միտքը ձգէ՝ մՏէրոջը
առջևը վկայութիւն ընելով ,
յխօսքերու վրայ վէճ չընել՝ որ
բանի մը օգտակար չէ , հապա միայն
լսողներուն կործանմանը համար է ։
15 Ջանք ըրէ քու անձդ ընտիր ցու-
ցընելու Աստուծոյ առջևը , անամօթ
բանւոր մը ըսածս որ պիտի չամչնայ ,
նայ , ճշմարտութեան խօսքը շիտակ
16 բացատրելով ։ նԲայց պիղծ ու
փուճ խօսքերէն մէկդի կեցիր .
քանզի անոնք աւելի յառաջ կ'եր-
17 թան ամբարշտութեան մէջ . Եւ
անոնց խօսքը քաղցկեղի պէս կը
ճարակէ . շորոնց կարգն են
18 Հիմենոս՝ ու Փիղետոս . ոՈրոնք
ճշմարտութենէն մոլորեցան , չու
կ'ըսեն թէ՝ Մեռելներուն յարու-
թիւնը արդէն եղած է , և կը կոր-
ծանեն մէկ քանիներուն հաւատքը ։
19 պԲայց Աստուծոյ հիմը հաստատուն
կը կենայ , ու աս կնիքը ունի , ջթէ
Տէրը կը ճանչնայ անոնք որ իրն են .
և՝ Անիրաւութենէ մէկդի թող կե-
նայ ան ամէնը՝ որ Տէրոջը անունը
20 կ'անուանէ ։ ռՍակայն մէկ մեծ
տան մը մէջ չէ թէ միայն ոսկիէ
ու արծաթէ ամաններ կան , հապա
փայտէ ու հողէ ամաններ ալ կան .

Ցամի Տեառն 66

ա Գլ. ա. 8: դ. 5: բ ա Տիմ. ա. 18: գ ա Կոր. Թ. 25: դ ա Կոր. Թ. 25, 26: ե ա Կոր. Թ. 10: զ Հռով. ա. 3, 4: Գոր. բ. 30: ժգ. 23: է ա Կոր. ժե. 1, 4, 20: ը Հռով. բ. 16: թ Գոր. Թ. 16: Գլ. ա. 12: ժ Եփե. գ. 1: Փիլ. ա. 7: Կող. դ. 3, 18: ի Գոր. իը. 31: Եփե. զ. 19, 20: Փիլ. ա. 13, 14: լ Եփե. գ. 13: Կող. ա. 24: խ բ Կոր. ա. 6: ծ ա Տիմ. ա. 15: կ Հռով. զ. 5, 8: բ Կոր. դ. 10: հ Հռով. ը. 17: ա Պետ. դ. 13: ձ Մատ. ժ. 33: Մար. ը. 38: Ղուկ. ժբ. 9: ղ Հռով. գ. 3: Թ. 6: ճ Թու. իգ. 19: մ ա Տիմ. ե. 21: զ. 13: Գլ. դ. 1: յ ա Տիմ. ա. 4: զ. 4: Տիտ. գ. 9, 11: ն ա Տիմ. դ. 7: զ. 20: Տիտ. ա. 14: շ ա Տիմ. ա. 20: ո ա Տիմ. զ. 21: չ ա Կոր. ժե. 12: պ Մատ. իդ. 24: Հռով. ը. 35: ա Յովհ. բ. 19: ջ Նաւ. ա. 7: Յովհ. ժ. 14, 27: Տես Թու. ժզ. 5: ռ ա Տիմ. գ. 15:

ս ա Տիմ. ա. 2: Գլ. ա. 2: տ Եփե. զ. 10: ր Գլ. ա. 13: գ. 10, 14: ց ա Տիմ. ա. 18: ւ ա Տիմ. գ. 2: Տիտ. ա. 9:

Յամ. Տեառն 66

–Հռով. Թ. 21 ։ ‡Տես Եւ. ծբ. 11 ։ +Գղ. գ. 17 ։ Տիտ. գ. 1 ։ •ա Տիմ. զ. 11 ։ §Գոր. Թ. 14 ։ ա Կոր. ա. 2 ։ –ա Տիմ. ա. 5 ։ դ. 12 ։ Բ ա Տիմ. ա. 4 ։ դ. 7 ։ զ. 4 ։ Հմր 16 ։ Տիտ. գ. 9 ։ ՚ Տիտ. գ. 2 ։ ՚ ա Տիմ. գ. 2 ։ 3 ։ Տիտ. ա. 9 ։ Գաղ. զ. 1 ։ ա Տիմ. գ. 11 ։ ա Պետ. դ. 15 ։ Գոր. ը. 22 ։ ա Տիմ. բ. 4 ։ Գղ. գ. 7 ։ Տիտ. ա. 1 ։ ա Տիմ. գ. 7 ։

–ա Տիմ. դ. 1 ։ Գղ. դ. 3 ։ բ Պետ. գ. 3 ։ ա Յօհ. բ. 18 ։ Յուդ. 18 ։ Փիլ. բ. 21 ։ բ Պետ. բ. 3 ։ ա Տիմ. զ. 4 ։ Յուդ. 16 ։ ա Տիմ. ա. 20 ։ բ Պետ. բ. 12 ։ Յուդ. 10 ։ Հռով. ա. 30 ։ Հռով. ա. 31 ։ Հռով. ա. 31 ։ բ Պետ. դ. 3 ։ բ Պետ. բ. 10 ։ Փիլ. գ. 19 ։ բ Պետ. բ. 13 ։ Յուդ. 4 19 ։ ա Տիմ. ե. 8 ։ Տիտ. ա. 16 ։ բ Թես. գ. 6 ։ ա Տիմ. զ. 5 ։ Մատ. իդ. 14 ։ Տիտ. ա. 11 ։ ա Տիմ. բ. 4 ։ Ել. է. 11 ։ ա Տիմ. զ. 5 ։ Հռով. ա. 28 ։ բ Կոր. ժգ. 5 ։ Տիտ. ա. 16 ։

և ոմանք պատուոյ համար են, ու
21 ոմանք անարգանաց համար ։ Ուս-
տի թէ որ մէկը իր անձը անանկ
բաներէն մաքրէ, անիկայ մէկ պա-
տուական անօթ մը պիտի ըլլայ՝
սրբուած ու Տէրոջը պիտանի՝
ամէն բարի գործքերու համար
22 պատրաստուած ։ Երիտասարդա-
կան ցանկութիւններէն ալ փա-
խիր, ու գնա արդարութեան՝ հա-
ւատքի՝ սիրոյ՝ խաղաղութեան
ետեւէ անոնց հետ՝ որ Տէրոջը ա-
նունը կը կանչեն մաքուր սրտով ։
23 Բայց յիմարական ու անիմաստ
վէճերէն մէկդի քաշուէ, գիտնա-
լով որ անոնցմէ կռիւներ կը ծնա-
24 նին ։ Ու Տէրոջը ծառային պէտք
չէ կռիւ ընել ։ հապա հեզահոգի
ըլլայ ամենուն, սորվեցնող, ոխ
25 չպահող ։ Քաղցրութեամբ խրա-
տել հակառակ կեցողները ։ Որ
ըլլայ թէ Աստուած ապաշխարու-
թիւն տայ անոնց՝ ճշմարտու-
26 թիւնը ճանչնալու համար, Եւ Սա-
տանային որոգայթէն զգաստանան,
որ անկէ բռնուած են՝ իր կամքին
ծառայելու ։

ԳԼ. Գ

1 Կը ծանուցանէ գալու ժամանակներուն վրա-
յով ։ 6 կը նկարագրէ ճշմարտութեան թշնա-
միները ։ 10 կ'առաջարկէ անոր՝ իր օրինակին
հետեւիլ ։ 16 և կը գովէ սուրբ գիրքերը ։

1 Այս ալ գիտցիր որ վերջի օրերը
չար ժամանակներ պիտի գան ։
2 Ինչու որ մարդիկ պիտի ըլլան
անձնասէր, արծաթասէր, ամ-
բարտաւան, հպարտ, հայհոյիչ,
ծնողաց անհնազանդ, ապերախտ,
3 անսուրբ, Անգութ, անհաշտ,
բանսարկու, անժուժկալ, դաժա-
4 նաբարոյ, բարին չսիրող, Մատ-
նիչ, յանդուգն, գոռոզ, աւե-
լի հեշտասէր՝ քան թէ աստուա-
5 ծասէր ։ Որոնք աստուածպաշտու-
թեան կերպարանքը ունին, բայց
անոր զօրութիւնը ուրացած են ։
Եւ դուն ասոնցմէ մէկդի կեցիր ։
6 Ինչու որ ասոնցմէ են որ տուներէն
ներս կը մտնեն, ու գերի կ'ընեն
մեղքով բեռնաւորուած տկարա-
միտ կնիկները՝ զանազան ցանկու-
7 թիւններէ վարուած, Որ միշտ կը
սորվին, ու բնաւ ճշմարտութիւ-
նը ճանչնալու չեն կրնար հասնիլ ։
8 Հապա ինչպէս որ Յանէս ու Յամ-
բրէս հակառակ կեցան Մովսէսին,
անանկ ալ ասոնք ճշմարտու-
թեանը հակառակ կը կենան ։ Ապա-
կանած մտքով մարդիկներ,
հաւատքի մէջ անպիտաններ են ։
9 Բայց աւելի յառաջ պիտի չեր-
թան ։ ինչու որ ասոնց անմտու-
թիւնը ամենուն յայտնի պիտի
ըլլայ, ինչպէս որ անոնցը եղաւ ։
10 Իսկ դուն հետեւող եղար իմ վար-
դապետութեանս, վարմունքիս,
դիտաւորութեանս, հաւատքիս,
երկայնմտութեանս, սիրոյս, համ-
11 բերութեանս, Հալածանքներուս,
չարչարանքներուս, ինչպէս որ ին-
ծի եղան Անտիոքի՝ և Իկոնիոնի՝
ու Լիւստրայի մէջ, ինտոր հալա-
ծանքներու համբերեցի, ու ամէ-
12 նէն զիս ազատեց Տէրը ։ Եւ ամէն
անոնք՝ որ կ'ուզեն աստուածպաշ-
տութեամբ ապրիլ Քրիստոս Յի-
սուսով՝ հալածանք պիտի կրեն ։
13 Բայց չար ու խաբեբայ մարդիկ-
ները չարութեան մէջ պիտի յա-
ռաջանան՝ մոլորցնելով ու մոլո-
14 րելով ։ Սակայն դուն հաստա-
տուն կեցիր ան բաներուն մէջը՝ որ
սորվեցար ու հաւատացիր, ինչու
որ գիտես թէ որմէ սորված ես ։
15 Նաև տղայ մանկութենէդ 'ի վեր
սուրբ գիրքերը գիտես, որոնք
կրնան իմաստուն ընել քեզ փըր-
կուելու՝ Քրիստոս Յիսուսի վրայ
16 եղած հաւատքովը ։ Բոլոր գիր-
քը Աստուծոյ շունչն է, և օգտա-
կար է սորվեցնելու, յանդիմանե-
լու, շիտկելու, ու արդարութեան
17 խրատելու համար ։ Որ Աստու-
ծոյ մարդը կատարեալ ըլլայ՝ ամէն
բարի գործքերու պատրաստուած ։

ԳԼ. Դ

1 Պօղոս կը յորդորէ Տիմոթէոսը բոլոր ջանքով
ու արթնութեամբ իր պաշտօնը կատարելու ։
6 կը յայտնէ անոր՝ թէ իր մահը մօտ է ։ 9
կ'ուզէ որ անիկայ շուտով իրեն գայ, ու իր
հետը բերէ Մարկոսը՝ և քանի մը բաներ ։
14 կը պատուիրէ որ զգուշանայ դարբին Ա-
ղեքսանդրոսէն ։ 16 կը ծանուցանէ անոր՝ ինչ
որ պատահեր էր իրեն՝ առջի անգամ ատեա-
նին ներկայանալուն ։ 19 և ապա կը վերջացընէ
իր թուղթը ։

1 Ես վկայութիւնը կը դնեմ Աս-
տուծոյ առջեւը՝ և Յիսուս Քը-
րիստոսի, որ պիտի դատէ կենդա-
նիները, ու մեռեալները իր յայտ-
նուելուն ու թագաւորութեանը
2 ատենը ։ Խօսքը քարոզէ ։ մտադ-
րութեամբ գործէ՛ պարապ ա-
տենին ու ատենէ դուրս, յանդի-
մանէ՛, սաստէ՛, յորդորէ՛ ամէն
երկայնմտութիւնով ու վարդապե-
3 տութիւնով ։ Ինչու որ ժամա-
նակ պիտի գայ՝ որ ողջամիտ վար-
դապետութեանը պիտի չհամբե-
րեն ։ Հապա իրենց լսելիքին եռ-
քովը իրենց ցանկութիւններուն
համեմատ վարդապետներ պիտի
4 դիզեն իրենց ։ Եւ ճշմարտութե-
նէն ականջներնին պիտի դարձընեն,
ու առասպելներու ետեւէ պիտի
5 մոլորին ։ Բայց դուն ամէն բանի
մէջ արթուն կեցիր, նեղութիւն-

Յամ. Տեառն 66

Եւ. է. 12 ։ բ. 18 ։ Թ. 11 ։ Փիլ. բ. 22 ։ ա Տիմ. դ. 6 ։ Գոր. ժգ. 45 ։ 50 ։ Գոր. ժդ. 2 ։ 5 ։ Գոր. ժդ. 18 ։ Է ։ Սաղ. լդ. 19 ։ բ Կոր. ա. 10 ։ Գղ. դ. 7 ։ Սաղ. լդ. 19 ։ Գոր. ժդ. 21 ։ Մատ. ժգ. 24 ։ Յօհ. ժէ. 14 ։ ա Կոր. ժե. 19 ։ ա Թես. գ. 3 ։ բ Թես. բ. 11 ։ ա Տիմ. դ. 1 ։ Գղ. բ. 16 ։ Գղ. ա. 13 ։ բ. 2 ։ Յօհ. ե. 39 ։ բ Պետ. ա. 20 ։ 21 ։ Կամ Բոլոր աստուածաշունչ Գիրքը օգտակար ալ Հռով. ժե. 4 ։ ա Տիմ. զ. 11 ։ Գղ. բ. 21 ։

ա Տիմ. ե. 21 ։ զ. 13 ։ Գղ. բ. 14 ։ Գոր. ժ. 42 ։

ա Տիմ. ե. 20 ։ Տիտ. ա. 13 ։ բ. 15 ։ ա Տիմ. դ. 13 ։ Գղ. գ. 1 ։ ա Տիմ. ա. 10 ։ Գղ. գ. 6 ։ ա Տիմ. ա. 4 ։ դ. 7 ։ Տիտ. ա. 14 ։ Գղ. ա. 8 ։ բ. 3 ։

Յամի Տեառն 66

ժ Գործ. ԻԱ. Տ. Եփե. Գ. 11. է Փիլ. Բ. 17. Ը Փիլ. Ա. 23. Տես Բ Պետ. Ա. 14. Խ Ա Կոր. Թ. 24. 25. Փիլ. Գ. 14. Ա Տիմ. Զ. 12. Եբր. ԺԲ. 1. Ծ Ա Կոր. Թ. 25. Յակ. Ա. 12. Ա Պետ. Ե. 4. Յայտ. Բ. 10. Կ Գղ. Ա. 12. Հ Կող. Դ. 14. Փիլիմ. 24. Ձ Ա Յօհ. Բ. 15. Ղ Տես Գլ. Ա. 15. Ճ Կող. Գ. 14. Փիլիմ. 24. Մ Գործ. ԺԲ. 25. ԺԵ. 37. Կող. Դ. 10. Յ Գործ. Ի. 4. Եփե. Զ. 21. Կող. Դ. 7. Տիտ. Գ. 12. Ն Գործ. ԺԹ. 33. Ա Տիմ. Ա. 20. Շ Բ Թագ. Գ. 39. Սաղ. ԻԸ. 4. Յայտ. ԺԸ. 6.

ներու համբերէ՛, ժաւետարանիչի
գործ գործէ, քու պաշտօնդ կա-
6 տարէ՛։ էԻնչու որ ես արդէն ըմպե-
լիքի պէս նուիրուած եմ, Ըու իմ
7 մեկնելուս ատենը հասեր է։ Խբարի
պատերազմը պատերազմեցայ, ըն-
թացքը կատարեցի, հաւատքը
8 պահեցի։ ԾԱսկէ ետեւ կայ կը մնայ
ինծի արդարութեան պսակը, որ
Տէրը՝ արդար Դատաւորը պիտի
հատուցանէ ինծի Կան օրը, ու չէ՛
թէ միայն ինծի, հապա անոնց ամէ-
նուն ալ՝ որ անոր յայտնուիլը սի-
րեցին։
9 Ջանք ըրէ շուտով ինծի գալու.
10 Ինչու որ ՀԴեմասը զիս թողուց՝ Ձու
աս աշխարհը սիրեց, և գնաց Թե-
սաղոնիկէ. Կրեսկէսը Ղնաց Գա-
ղատիա, Տիտոսը՝ Դաղմատիա.
11 ՃՄիայն ՃՂուկասը իմ հետս է.
ՄՄարկոսը առնես քու հետդ բե-
րես. ինչու որ ինծի օգտակար է
12 սպասաւորութեան համար։ Եւ ես
13 ՅՏիւքիկոսը Եփեսոս ղրկեցի։ Ան
վերարկուն՝ որ Տրովադա թողուցի
Կարպոսին քովը, երբոր գաս՝ բեր,
գիրքերն ալ, մանաւանդ մագա-
14 ղաթները։ ՆԴարբին Աղեքսանդ-
րոսը շատ չարութիւն ըրաւ ինծի.
ՇՏէրը անոր պիտի հատուցանէ իր
15 գործքերուն համեմատ։ Դուն ալ
անկէ զգուշանաս. ինչու որ մեր
16 խօսքերուն շատ դէմ կեցաւ։ Առջի
անգամ ատեանին առջևը պատաս-
խան տալուս՝ իմ կողմանէս մէկը
չկայնեցաւ ինծի հետ, Ոհապա ա-
մէնն ալ զիս թողուցին. Չ[Աստուած չընէ որ ասիկա իրենց համարուի]
Աստուծմէ որ ան իրենց յանցանք չսե-
17 պուի։ ՊԲայց Տէրը իմ քովս կայ-
նեցաւ՝ ու զիս զօրացուց, Ջոր քա-
րոզութիւնը իմ միջոցովս լման ըլ-
լայ, ու բոլոր հեթանոսները լսեն.
Ռև ես առիւծին բերնէն ազատե-
18 ցայ։ Եւ ՍՏէրը ամէն չար գործէ
պիտի ազատէ զիս, և ապահովու-
թեամբ իր երկնային թագաւորու-
թեանը պիտի հասցընէ. Վիրեն
փառք յաւիտեանս յաւիտենից.
ամէն։
19 ՏԲարեւ տուր Պրիսկէին և Ակիւ-
ղային, Րու Օնեսիփորոսին տանը։
20 ՑԵրաստոսը Կորնթոսի մէջ մնաց.
և ՒՏրոփիմոսը Մելիտոսի մէջ թո-
21 ղուցի հիւանդացած։ ՓՋանք ըրէ
ձմեռէն առաջ գալ։ Բարեւ կ՚ը-
նեն քեզի Եւբուղոսը ու Պուդէսը
և Լինոսը ու Կղօդիան՝ և բոլոր եղ-
22 բայրները։ ՔՏէր Յիսուս Քրիս-
տոսը քու հոգիիդ հետը ըլլայ. շը-
նորհքը ձեզի հետ. ամէն։

Յամի Տեառն 66

Ո Գղ. Ա. 15. Չ Գործ. Է. 59. Պ Մատ. Ժ. 19. Գործ. ԻԳ. 11. ԻԷ. 33. Ջ Գործ. Թ. 15. ԻԶ. 17. 18. Եփե. Գ. 8. Ռ Սաղ. ԻԲ. 21. Բ Պետ. Բ. 9. Ս Սաղ. ՃԻ. 7. Վ Հռով. ԺԱ. 36. Գաղ. Ա. 5. Եբր. ԺԳ. 21. Տ Գործ. ԺԸ. 2. Հռով. ԺԶ. 3. Ր Գղ. Ա. 16. Ց Գործ. ԺԹ. 22. Հռով. ԺԶ. 23. Ւ Գործ. Ի. 4. ԻԱ. 29. Փ Հմր. 9. Ք Գաղ. Զ. 18. Փիլիմ. 25.

ԹՈՒՂԹ

# ՊՕՂՈՍԻ ԱՌԱՔԵԼՈՅՆ

## ԱՌ ՏԻՏՈՍ

Յամի Տեառն 65

Ա Ա Տիմ. Գ. 16. Զ. 3. Բ Բ Տիմ. Բ. 25. Գ Բ Տիմ. Ա. 1. Գղ. Գ. 7. Դ Թուոց. ԻԳ. 19. Բ Տիմ. Բ. 13. Ե Հռով. ԺԶ. 25. Բ Տիմ. Ա. 9. Ա Պետ. Ա. 20. Զ Բ Տիմ. Ա. 10. Է Ա Թես. Բ. 4. Ա Տիմ. Ա. 11.

### ԳԼՈՒԽ Ա

Առաքեալը կը ծանուցանէ թէ ի՛նչ բանի համար զանիկայ Կրետէ թողուց, 6 թէ քարոզչութեան պաշտօնին ընտրուելու մարդիկը ի՛նչ վարմունքի տէր ըլլալու են։ 11 Կը պատուիրէ չար վարդապետներուն բերանը պապանձեցընել. 12 և անոնց բնութիւնը կը ստորագրէ։

1 Պօղոս Աստուծոյ ծառայ՝ և Յի-
սուս Քրիստոսի առաքեալ, Աս-
տուծոյ ընտրեալներուն հաւատքին՝
ու Ասաստուածպաշտութեան հետ
կից եղող Բճշմարտութիւնին գի-
2 տութեանը համեմատ. ԳՅաւիտե-
նական կենաց յուսովը, Դոր ինքը
անսուտ Աստուածը խոստացաւ
Եյաւիտենական դարերէն առաջ,
3 ԶԲայց իր խօսքը իր ժամանակին
յայտնեց քարոզութիւնով, Էոր
ինծի յանձնուեցաւ Ըմեր Փրկիչ
4 Աստուծոյ հրամանովը. ԹՏիտոսին
ժիմ հարազատ որդւոյս Իհասարա-
կաց հաւատքովը՝ Լշնորհք և խաղա-
ղութիւն Հօր Աստուծմէն ու մեր
Փրկչէն՝ Տէր Յիսուս Քրիստոսէն։
5 Ասոր համար ես քեզ Կրետէ թո-
ղուցի, Խոր ինչ պակաս բան որ
կայ, շիտկես, Ծու ամէն մէկ քա-
ղաքի մէջ երէցներ կարգես, ինչպէս
6 որ ես քեզի պատուիրեցի. Կթէ որ
մէկը անմեղադրելի ըլլայ՝ Հմէկ կըն-
կան մը էրիկ, Ձհաւատացեալ զա-
ւակներ ունենայ, որ անառակու-
թեան համար ամբաստանուած կամ
7 անհնազանդ չըլլան։ Ինչու որ եպիս-

Յամի Տեառն 65

Ը Ա Տիմ. Ա. 1. Բ. 3. Դ. 10. Թ Բ Կոր. Բ. 13. Է. 13. Ը. 6. 16. 23. ԺԲ. 18. Գաղ. Բ. 3. Ժ Ա Տիմ. Ա. 2. Ի Հռով. Ա. 12. Բ Կոր. Դ. 13. Բ Պետ. Ա. 1. Լ Եփե. Ա. 2. Կող. Ա. 3. Ա Տիմ. Ա. 2. Բ Տիմ. Ա. 2. Խ Ա Կոր. ԺԱ. 35. Ծ Գործ. ԺԴ. 22. Բ Տիմ. Բ. 2. Կ Ա Տիմ. Գ. 2. ԱԵ. Հ Ա Տիմ. Գ. 12. Ձ Ա Տիմ. Գ. 4. 12.

Յամի Տեառն 65

ՂՄատ. ԻԴ. 45 ։ աԿոր. Դ. 1, 2 ։ ՑՂև. Ժ. 9 ։ աՏիմ. Գ. 3, 8 ։ Եփե. Ե. 18 ։ հաՏիմ. Դ. 3, 8 ։ աՊետ. Ե. 2 ։ յաՏիմ. Գ. 2 ։ նաՏիմ. Զ. 3 ։ բՏիմ. Բ. 2 ։ շաՏիմ. Ա. 10 ։ Զ. 3 ։ բՏիմ. Դ. 3 ։ Գղ. Բ. 1 ։ ոաՏիմ. Ա. 6 ։ չՀռով. ԺԶ. 18 ։ պԳոր. ԺԵ. 1 ։ ՋՄատ. ԻԳ. 14 ։ բՏիմ. Գ. 6 ։ ռաՏիմ. Զ. 5 ։ սԳոր. ԺԵ. 23 ։ վբԿոր. ԺԴ. 10 ։ բՏիմ. Դ. 2 ։ տԳղ. Բ. 2 ։ րաՏիմ. Ա. 4 ։ Դ. 7 ։ բՏիմ. Դ. 4 ։ ցԵս. ԻԹ. 13 ։ Մատ. ԺԵ. 9 ։ Կող. Բ. 22 ։ ւՂու. ԺԱ. 39, 40, 41 ։ Հռով. ԺԴ. 14, 20 ։ աԿոր. Զ. 12 ։ Ժ. 23, 25 ։ աՏիմ. Դ. 3, 4 ։ փՀռով. ԺԴ. 23 ։ քբՏիմ. Գ. 5 ։ Յուդ. 4 ։ օՀռով. Ա. 28 ։ բՏիմ. Գ. 8 ։

աաՏիմ. Ա. 10 ։ Զ. 3 ։ բՏիմ. Ա. 13 ։ Գղ. Ա. 9 ։ բԳղ. Ա. 13 ։ գաՏիմ. Բ. 9, 10 ։ Գ. 11 ։ աՊետ. Գ. 3, 4 ։ *Յուն. շատ գինիի ծառայ եղած ։ դաՏիմ. Ե. 14 ։

կոպոսին պէտք է անմեղադրելի ըլլալ՝ ՂԱստուծոյ տնտեսին պէս. ոչ յանդուգն, ոչ բարկացող, եոչ գինեմոլ, ոչ զարնող, հոչ անարգ շահախնդրութեան ետևէ եղող,
8 ձՀապա հիւրասէր, բարեսէր, խոհեմ, արդար, սուրբ, ժուժկալ.
9 ՃՀաստատ բռնելով նվարդապետութեան համաձայն հաւատարիմ խօսքը, Ըոր կարող ըլլայ ողջամիտ վարդապետութիւնով յորդորել, և հակառակ կեցողները յանդիմանել ։
10 ՊՔանզի շատ են անհնազանդները, ունայնութիւն խօսողները, Ղու միտք խաբողները. Ղմանաւանդ անոնք՝ որ թլփատութենէն են. Ո-
11 րոնք պէտք է պապանձեցընել, Ըոր ամբողջ տուներ կը կործանեն, ու անպատեհ բաներ կը սորվեցընեն Պանարգ շահախնդրութեան համար ։
12 ՌԱնոնցմէ մէկը զրուցեց՝ որ իրենց բուն մարգարէն էր. Կրետացիները միշտ սուտլուգ են, չար
13 գազաններ, դատարկապորտեր ։ Աս վկայութիւնը ճշմարիտ է. Ըանոր համար սաստիկ յանդիմանէ անոնք, Տոր առողջանան հաւատքին
14 մէջ. ՐՈւ չնային Հրէական առասպելներուն, Ցև ճշմարտութենէ հեռացող մարդոց պատուէրներուն ։
15 ՒԱմէն բան մաքուր է մաքուրներուն, Փբայց պղծերուն ու անհաւատներուն մէկ բան մը մաքուր չէ. հապա անոնց միտքն ալ
16 խղճմտանքն ալ պղծուած են ։ Կը խոստովանին թէ զԱստուած կը ճանչնան, Քև իրենց գործքովը կ՚ուրանան, պիղծ ու անհնազանդ ըլլալով, Օև ամէն բարի գործի անպիտան ։

## ԳԼ. Բ

1 Պատուէրներ կու տայ Տիտոսին՝ թէ՛ իր վարդապետութեանը և թէ իր վարքին վրայով. 9 կը խօսի ծառաներուն և ընդհանրապէս բոլոր քրիստոնեաներուն պարտաւորութեանցը վրայով ։

1 Բայց դուն խօսէ՛ աինչ որ կը վայլէ ողջամիտ վարդապետութեանը.
2 Ծերերուն զգաստ ըլլալ, ծանրաբարոյ, խոհեմ, բողջամիտ՝ հաւատքով, սիրով, համբերութիւնով ։
3 գՆոյնպէս ալ պառաւներուն անանկ վարմունք ունենալ, ինչոր կը վայլէ սրբութեան, ոչ բանսարկու ըլլալ, ոչ *գինեմոլ, հողաբարի խրատ տուող.
4 Որ խրատեն նորահասակ կնիկները՝ դէրիկնին սիրող, զաւակնին սիրող ըլլալ,
5 Խոհեմ, ողջախոհ, տնաշէն, բարեգործ, եիրենց էրիկներուն հնազանդ. Զոր չըլլայ թէ Աստուծոյ

6 խօսքը հայհոյուի ։ Անանկ ալ երիտասարդները յորդորէ խոհեմ ըլլալ.
7 ԷԱմէն կողմէ քու անձդ բարի գործքերու օրինակ ցուցընելով, վարդապետութեան մէջ անեղծութիւն, պարկեշտութիւն, ԸՈղջամիտ ու անմեղադրելի խօսք.
8 Թոր հակառակ կեցողը ամչնայ, ու մեր վրայով գէշ բան մը չունենայ ըսելու ։
9 ԺԾառաներուն սորվեցուր իրենց տէրերուն հնազանդ ըլլալ, Ըև ամէն բանի մէջ հաճելի. ոչ հակառակախօսներ,
10 Ոչ խորողներ. հապա բոլորովին բարի հաւատարմութիւն ցուցընեն, Իոր մեր Փրկիչ Աստուծոյ վարդապետութիւնը
11 ամէն բանի մէջ զարդարեն ։ ԽԻնչու որ Աստուծոյ փրկարար շնորհքը
12 Ծբոլոր մարդոց երևցաւ. Որ մեզ կը խրատէ՝ Կոր ամբարշտութիւնը Հու աշխարհային ցանկութիւնները ուրանանք, և Ձզգաստութիւնով ու արդարութիւնով և բարեպաշտութիւնով ապրինք աս աշխարհիս մէջ.
13 ՂՈւ սպասենք անհերջանիկ Ճյոյսին, Մև մեծ Աստուծոյ ու մեր Փրկիչ Յիսուս Քրիստոսին փառացը յայտնուելուն.
14 ՅՈր իր անձը մեզի համար տուաւ, որ մեզ ամէն անօրէնութենէ ազատէ, Նու մաքրէ Շիրեն սեփհական ժողովուրդ ըլլալու Ոբարի գործքերու նախանձաւոր ։
15 Աս բաները խօսէ Չև յորդորէ ու յանդիմանէ բոլորովին սաստելով. Պչըլլայ որ մէկը քեզ անարգէ ։

## ԳԼ. Գ

1 Դարձեալ պատուէրներ կու տայ Տիտոսին՝ թէ՛ սորվեցընելու և թէ չսորվեցընելու բաներուն համար. 10 կը խրատէ նաև յամառեալ հերետիկոսներէն ետ քաշուիլ. 12 և կը պատուիրէ որ իրեն գայ, նշանակելով անոր՝ թէ երբ և թէ ո՛ւր պիտի գտնէ զինքը. ու այսպէս իր թուղթը կը վերջացընէ ։

1 Անոնց մի՛տքը ձգէ աիշխանութիւններուն և պետութիւններուն հնազանդիլ, ու հպատակ ըլլալ, բու ամէն բարի գործքերու
2 պատրաստ գտնուիլ. գՄէկու մը հայհոյութիւն չընել, դկռուարար չըլլալ. եհալած հեզահոգի, զամէն մարդոց բոլորովին քաղցրութիւն
3 ցուցընել ։ էԻնչու որ մենք ալ ատեն մը՝ անմիտ էինք, անհնազանդ, մոլորեալ, և զանազան ցանկութիւններու ու հեշտութիւններու կը ծառայէինք. չարութիւնով ու նախանձով կը վարուէինք, ատելի
4 էինք, և մէկզմէկ կ՚ատէինք ։ ԸԲայց

Յամի Տեառն 65

էաՏիմ. Դ. 12 ։ աՊետ. Ե. 3 ։ ըաՏիմ. Զ. 3 ։ թՂեւտ. Ե. 9 ։ աՏիմ. Ե. 14 ։ աՊետ. Բ. 12, 15 ։ Գ. 16 ։ ժԲ Թես. Դ. 14 ։ իԵփե. Զ. 5 ։ Կող. Գ. 22 ։ աՏիմ. Զ. 1, 2 ։ աՊետ. Բ. 18 ։ լԵփե. Ե. 24 ։ խՄատ. Ե. 16 ։ Փիլ. Բ. 15 ։ ծՀռով. Ե. 15 ։ Գղ. Դ. 4, 5 ։ աՊետ. Ե. 12 ։ կՂու. Գ. 6 ։ Յով. Ա. 9 ։ աՏիմ. Բ. 4 ։ հՀռով. Զ. 19 ։ ձաՊետ. Դ. 2 ։ աՅով. Բ. 16 ։ ղՂու. Ա. 75 ։ Եփե. Ա. 4 ։ Կող. Ա. 22 ։ աԹես. Դ. 7 ։ ճաԿոր. Ա. 7 ։ Փիլ. Դ. 20 ։ բՊետ. Գ. 12 ։ մԳոր. Ի. 28 ։ Կող. Ա. 5, 23 ։ Գղ. Ա. 2 ։ Գ. 7 ։ յԿող. Գ. 4 ։ բՏիմ. Դ. 1, 8 ։ Եբր. Թ. 28 ։ աՊետ. Ա. 7 ։ աՅով. Գ. 3 ։ նԳաղ. Ա. 4 ։ Բ. 20 ։ Եփե. Ե. 2 ։ աՏիմ. Բ. 6 ։ շԵբր. Թ. 14 ։ ոԵլ. ԺԹ. 5 ։ Բ Օր. Է. 6 ։ ԺԴ. 2 ։ ԻԶ. 18 ։ աՊետ. Բ. 9 ։ չԵփե. Բ. 10 ։ Գղ. Դ. 8 ։ պբՏիմ. Դ. 2 ։ ջաՏիմ. Դ. 12 ։

աՀռով. ԺԳ. 1 ։ աՊետ. Բ. 13 ։ բԿող. Ա. 10 ։ բՏիմ. Բ. 21 ։ Եբր. ԺԳ. 21 ։ գԵփե. Դ. 31 ։ դբՏիմ. Բ. 24, 25 ։ եՓիլ. Դ. 5 ։ զԵփե. Դ. 2 ։ Կող. Գ. 12 ։ էաԿոր. Զ. 11 ։ Եփե. Բ. 1 ։ Կող. Ա. 21 ։ Գ. 7 ։ աՊետ. Դ. 3 ։ ըաՏիմ. Բ. 3 ։

Յամի Տեառն 65

երբոր մեր Փրկիչ Աստուծոյն
քաղցրութիւնը ու մարդասիրու-
5 թիւնը յայտնուեցաւ, Ոչ թէ
արդարութեան գործքերէն՝ որ մենք
ըրինք, հապա իր ողորմութեանը
համեմատ մեզ փրկեց նորէն ծնա-
նելու աւազանին միջոցովը՝ ու
6 Սուրբ Հոգիին նորոգելովը, Որն
որ առատօրէն թափեց մեր վրայ
Յիսուս Քրիստոս մեր Փրկչին ձեռ-
7 քովը, Որ անոր շնորհքովը ար-
դարացած՝ յաւիտենական կենաց
8 յուսով ժառանգ ըլլանք։ Աս
խօսքը հաւատարիմ է. և կ'ուզեմ
որ ասոնք հաստատես, որ Աստու-
ծոյ հաւատացողները հոգ տանին
բարի գործքեր ընելու վրայ ըլլալ.
ասոնք են բարի ու մարդոց օգ-
9 տակար բաները։ Բայց դուն յի-
մարական վէճերէն ու ազգահա-
մարներէն ու հակառակութիւննե-
րէն՝ և օրէնքի վրայով եղած կռիւ-
ներէն մէկդի կեցիր. ինչու որ
10 անօգուտ են ու սնոտի։ Հերձուա-
ծող մարդէն՝ առաջին ու երկրորդ
անգամ խրատելէն ետև ետ քա-
11 շուէ, Գիտնալով որ անանկը ծը-
ռուած է, և մեղք կը գործէ ինք-
զինքը դատապարտելով։
12 Երբոր Արտեման կամ Տիւքիկո-
սը քեզի խրկեմ, ջանք ըրէ ինծի
գալու Նիկոպօլիս. ինչու որ միտքս
13 դրի ձմեռը հոն անցընելու։ Զե-
նաս օրինականը՝ ու Ապողոսը
փութով ճամբայ դիր, հոգ տանե-
14 լով որ անոնց բան մը չպակսի։ Եւ
մերիններն ալ թող սորվին բարի
գործքեր ընելու վրայ ըլլալ հարկա-
ւոր պարագաներու մէջ, որ ան-
15 պտուղ չըլլան։ Բարև կ'ընեն քեզի
ամէնն ալ որ իմ հետս են. բարև
տուր անոնց որ մեզ կը սիրեն հա-
ւատքով. շնորհքը ձեր ամենուն
հետը ըլլայ. ամէն։

Ա Պետ. բ. 11։ Բ Հռով. գ. 20։ Թ. 11։ Ժա. 6։ Գաղ. բ. 16։ Եփե. բ. 4. 8. 9։ Բ Տիմ. ա. 9։ Է Յով. գ. 3. 5։ Եփե. ե. 26։ Ա Պետ. գ. 21։ Լ Եզեկ. լզ. 25։ Յովէլ. բ. 28։ Յով. ա. 16։ Գոր. բ. 33։ Ժ. 45։ Հռով. ե. 5։ Ի Հռով. գ. 24։ Գաղ. բ. 16։ Գղ. բ. 11։ Ծ Գղ. ա. 2։ Կ Հռով. ը. 23. 24։ Հ Ա Տիմ. ա. 15։ Գղ. ա. 9։ Ձ Հմր 1. 14։ Գղ. բ. 14։ Ղ Ա Տիմ. ա. 4։ Բ Տիմ. բ. 23։ Գղ. ա. 14։

Յամի Տեառն 65. Ճ Բ Տիմ. բ. 14։ Մ Բ Կոր. ժգ. 2։ Յ Մատ. ժը. 17։ Հռով. ժզ. 17։ Բ Թես. գ. 6. 14։ Բ Տիմ. գ. 5։ Բ Յով. 10։ Ն Գործ. ժդ. 46։ Շ Գործ. ի. 4։ Բ Տիմ. դ. 12։ Ո Գործ. ժբ. 24։ Չ Հմր 8։ Եփե. գ. 28։ Պ Հռով. ժե. 28։ Փիլ. ա. 11։ դ. 17։ Կող. ա. 10։ Բ Պետ. ա. 8։

ԹՈՒՂԹ

# ՊՕՂՈՍԻ ԱՌԱՔԵԼՈՅՆ

## ԱՌ ՓԻԼԻՄՈՆ

Յամի Տեառն 64

4 Պօղոս իր ուրախութիւնը կը յայտնէ՝ Փիլիմոնի հաւատքը ու սէրը լսած ըլլալով. 9 կը խնդրէ անկէ որ թողութիւն տայ Ոնեսիմոսին որ իր ծառան էր, ու դարձեալ սիրով ընդունի զանիկայ։

1 Պօղոս Յիսուս Քրիստոսի կա-
պեալը՝ և Տիմոթէոս եղբայրը,
Փիլիմոն մեր սիրելիին ու գործակ-
2 ցին, Եւ Ապփիա սիրելիին, ու
Արքիպպոս մեր զինուորակցին,
ու քու տանդ մէջի եկեղեցիին.
3 Շնորհք և խաղաղութիւն ձեզի՝
Աստուծմէ մեր Հօրմէն և Տէր Յի-
սուս Քրիստոսէն։
4 Կը գոհանամ միշտ իմ Աս-
տուծմէս, քեզ իմ աղօթքներուս
5 մէջ յիշելով. Երբոր կը լսեմ քու
սէրդ ու հաւատքդ՝ որ ունիս Տէր
Յիսուսին վրայ՝ և բոլոր սուրբերուն
6 վրայ. Որ քու հաւատքիդ հաղոր-
դակցութիւնը պտղաբեր ըլլայ
Քրիստոս Յիսուսով ձեր վրայ
եղած ամէն բարութեանը ճանչ-
7 ցուելովը։ Քանզի շատ ուրախու-
թիւն և մխիթարութիւն ունինք
քու սիրոյդ վրայ, որ սուրբերուն
սիրտերը քեզմով հանգստացած
են՝ եղբայր։
8 Ասոր համար թէև շատ համար-
ձակութիւն ունիմ Քրիստոսով՝
վայելուչ եղածը քեզի հրամայելու.
9 Բայց յաւէտ սիրոյ համար կ'աղա-
չեմ, անանկ մէկը ըլլալով՝ ինչպէս
որ եմ ես Պօղոս ծերացած, Ու
հիմա Յիսուս Քրիստոսի համար
10 կապուած ալ։ Կ'աղաչեմ քեզի
իմ որդւոյս Ոնեսիմոսին համար՝
որն որ իմ կապանքներուս մէջը
11 ծնայ. Որ ատեն մը անպիտան էր
քեզի. բայց հիմա քեզի ալ ինծի
12 ալ պիտանի է. Անիկայ ետ խրկեցի.
դուն ալ ընդունէ՝ անիկայ՝ որ է
13 իմ աղէքս. Որն որ կ'ուզէի իմ
քովս պահել, որ քու տեղդ ինծի
սպասաւորութիւն ընէ աւետարա-
14 նին կապանքներուն մէջը։ Բայց ա-
ռանց քու կամքիդ չուզեցի բան մը
ընել, որ քու բարերարութիւնդ
իբր թէ ստիպմամբ եղած չըլ-
15 լայ, հապա կամաւ։ Քանզի գուցէ
աս պատճառով անիկայ քիչ մը ա-
տեն զատուեցաւ, որ զանիկայ յա-

Յամի Տեառն 64. Ա Եփե. գ. 1։ դ. 1։ Բ Տիմ. ա. 8։ Հմր 9։ Բ Փիլ. բ. 25։ Գ Կող. դ. 17։ Դ Փիլ. բ. 25։ Ե Հռով. ժզ. 5։ Ա Կոր. ժզ. 19։ Զ Եփե. ա. 2։ Է Եփե. ա. 16։ Ա Թես. ա. 2։ Բ Թես. ա. 3։ Ը Եփե. ա. 15։ Կող. ա. 4։ Թ Փիլ. ա. 9. 11։ Ժ Որմէ մեր Բ Կոր. է. 13։ Բ Տիմ. ա. 16։ Հմր 20։

Յամի Տեառն 64. Ի Ա Թես. բ. 7։ Լ Հմր 1։ Խ Կող. դ. 9։ Ծ Ա Կոր. դ. 15։ Գաղ. դ. 19։ Կ Ա Կոր. ժզ. 17։ Փիլ. ա. 30։ Հ Բ Կոր. թ. 7։ Ձ Ծն. խե. 5. 8։

Ցամ Տեսան
64
ճՄատ. իդ. Տ. ա Տիմ. զ. 2.
ճ Կոր. դ. 22.
ժ Կոր. ը. 23.

16 ւիտեան ունենաս . Չէ թէ ալ ծա-
ռայի մը պէս, հապա ծառայէն վեր՝
ղսիրելի եղբօր պէս . և ԲԷ որ ինծի
այսպէս սիրելի է , որչափ աւելի պէ-
տի ըլլայ քեզի՝ թէ մարմնի կող-
17 մանէ ու թէ Տէրոջը ։ Ուստի թէ
որ զիս քեզի հաղորդ կը սեպես ,
ընդունէ անիկայ՝ որպէս թէ զիս ։
18 Եւ թէ որ քեզի անիրաւութիւն
մը ըրած է՝ կամ պարտք մը ունի ,
19 ան իմ հաշիւիս անցուր . Ես Պօ-
ղոսս իմ ձեռքովս գրեցի . ես կը
վճարեմ, որ չըսեմ քեզի՝ թէ դուն
ալ քու անձդ ինծի պարտական
20 ես ։ Այո՛ եղբայր՝ թող քեզմէ
ունենամ այս օգուտը Տէրոջմով .
հանգչեցուր իմ աղիքս Քրիստո-
21 սով ։ Քու հնազանդութեանդ
վստահանալով՝ քեզի գրեցի . քան-
զի գիտեմ որ ըսածէս ալ աւելի
պիտի ընես ։
22 Ասկէ 'ի զատ ինծի բնակարան
մըն ալ պատրաստէ . ինչու որ
կը յուսամ թէ ձեր աղօթքնե-
րուն միջոցովը ձեզի պիտի շնոր-
23 հուիմ ։ Բարև կ'ընէ ձեզի Եպ-
պափրաս՝ իմ գերութեան ընկերս
24 Քրիստոս Յիսուսով . Նաև Մար-
կոս՝ Արիստարքոս՝ Դեմաս՝
25 Ղուկաս՝ իմ գործակիցներս ։
Մեր Տէր Յիսուս Քրիստոսի շնորհ-
քը՝ ձեր հոգիին հետը ըլլայ . ամէն ։

Ցամ Տեսան
64
ժ Հմ 7.
ռ Կոր. է. 16.
ռ Փիլ. ա. 25. բ 24.
ռ Կոր. ա. 11.
ռ Կող. ա. 7. դ 12.
ռ Գոր. ժբ. 12. 25.
ռ Գոր. ժթ. 29. ի. 2. Կող. դ. 10.
ռ Կող. դ. 14.
ռ Տիմ. դ. 11.
ռ Տիմ. դ. 22.

ԹՈՒՂԹ

# ՊՕՂՈՍԻ ԱՌԱՔԵԼՈՅՆ

## ԱՌ ԵԲՐԱՅԵՑԻՍ

Ցամ Տեսան
64
ա Թուռ. ժբ. 6. 8.
բ Օր. դ. 30. Գաղ. դ. 4. Եփե. ա. 10.
գ Յոհ. ա. 17. ժե. 15. Գղ. բ. 2.
դ Սաղ. բ. 8. Մատ. իա. 38. իբ. 18. Յոհ. գ. 35. Հռով. ը. 17.
ե Յոհ. ա. 3. Կոր. ը. 6. Կող. ա. 16.
զ Յոհ. ա. 14. ժդ. 9. բ Կոր. դ. 4. Կող. ա. 15.
է Յոհ. ա. 4. Կող. ա. 17. Յայտ. դ. 11.
ը Գղ. է. 27. թ. 12. 14. 16.
թ Սաղ. ճժ. 1. Եփե. ա. 20. Գղ. ը. 1. ժ. 12. ժբ. 2. ա Պետ. գ. 22.
ժ Եփե. ա. 21. Փիլ. բ. 9. 10.
ժա Սաղ. բ. 7. Գոր. ժգ. 33. Գղ. ե. 5.
ժբ Թագ. է. 14. ա Մն. իբ. 10. իբ. 6. Սաղ. ձթ. 26. 27.
ժգ Հռով. ը. 29. Կող. ա. 18. Յայտ. ա. 5.
ժդ Տե. Սաղ. դէ. 7. ա Պետ. գ. 22.

## ԳԼՈՒԽ Ա

1 Առաքեալը կը ցուցընէ թէ Քրիստոս ամենէն աւելի հզօր է մեզի գալով՝ 4 հրեշտակներէն գերագոյն եղաւ՝ թէ անձամբ և թէ պաշտօնով ։

1 Շատ մասերով ու շատ կերպե-
րով առաջուց խօսելով Աս-
տուած հայրերուն հետ մարգարէնե-
2 րով , Այս ետքի օրերս իր Որդի-
ովը խօսեցաւ մեր հետը , որ
զանիկայ ամէն բանի ժառանգ
դրաւ , որ անով աշխարհքն ալ
3 ստեղծեց . Որ անիկայ իր փառա-
ցը լոյսն է , և իր էութեանը բուն
պատկերը . Եւ ան որ իր զօրութեան
խօսքովը ամէն բան կը բռնէ . իր
անձովը մեր մեղքերը սրբելով ,
բարձրերը՝ Աստուծոյ մեծութեա-
4 նը աջ կողմը նստաւ ։ Եւ այնչափ
աւելի եղաւ հրեշտակներէն , որ-
չափ որ անոնցմէ աւելի աղէկ անուն
5 ժառանգեց ։ Ինչու որ հրեշ-
տակներէն որո՞ւն ըսաւ երբեք .
Դուն իմ Որդիս ես , ես այսօր
քեզ ծնայ . և դարձեալ՝ Ես ա-
նոր Հայր պիտի ըլլամ , ու անի-
6 կայ ինծի Որդի պիտի ըլլայ . Եւ
դարձեալ՝ Երբոր անդրանիկը աշ-
խարհք կը մտցընէ , կ'ըսէ . Աս-
տուծոյ բոլոր հրեշտակներն ալ ա-
նոր երկրպագութիւն թող ընեն ։
7 Եւ հրեշտակներուն վրայով կ'ըսէ .
Որ իր հրեշտակները հոգիներ կ'ը-
նէ . ու իր պաշտօնեաները կրակի
8 բոց ։ Սակայն Որդիին կ'ըսէ .
Քու աթոռդ ով Աստուած՝
յաւիտեանս յաւիտենից է . քու
թագաւորութեան գաւազանդ՝
9 ուղղութեան գաւազան է . Արդա-
րութիւնը սիրեցիր՝ ու անօրէ-
նութիւնը ատեցիր . անոր համար
ով Աստուած՝ քու Աստուածդ
ուրախութեան եղով օծեց քեզ՝
10 քու ընկերներէդ աւելի ։ Եւ դուն
ով Տէր՝ սկիզբէն երկրին հիմերը
դրիր , ու երկինքը քու ձեռքերուդ
11 գործքն է . Անոնք պիտի կորսուին ,
բայց դուն կը կենաս ու կը մնաս .
ու ամէնը լաթի պէս պիտի մաշին ,
12 Ու վերարկուի պէս պիտի դալարես
զանոնք՝ և պիտի փոխուին . բայց
դուն նոյն ինքն ես , ու քու տարի-
13 ներդ պիտի չպակսին ։ Եւ հրեշ-
տակներէն որո՞ւն ըսաւ երբեք .
Իմ աջ կողմս նստէ , մինչև որ
քու թշնամիներդ ոտքերուդ պա-
14 տուանդան դնեմ ։ Չէ՞ որ անոնք
ամէնը սպասաւորող հոգիներ
են , որոնք սպասաւորութեան կը
խրկուին անոնց համար՝ որ փրկու-
թիւն պիտի ժառանգեն ։

## ԳԼ. Բ

1 Կը սորվեցընէ թէ պարտինք հնազանդ ըլլալ Քրիստոս Յիսուսի 5 վասն զի մեր բնութիւնը

Ցամ Տեսան
64
ժ Սաղ. ճդ. 4.
ժ Սաղ. խե. 6. 7.
ժ Ես. կա. 1. Գոր. դ. 27. ժ. 35.
ժ Սաղ. ճբ. 25. Ա.
ժ Ես. լդ. 4. ծա. 6. Մատ. իդ. 35. բ Պետ. գ. 7. 10. Յայտ. իա. 1.
ժ Սաղ. ճժ. 1. Մատ. իբ. 44. Մար. ժբ. 36. Ղուկ. ի. 42. Գղ. ժ. 12. Հռ 3.
ժ Ծն. ժթ. 16. ժբ. 1. 2. 24. Սաղ. լդ. 7. դա. 11. ձգ. 20. 21. Դան. գ. 28. է. 10. ժ. 11. Մատ. ժր. 10. Ղուկ. ա. 19. բ. 9. 13. Գոր. ժբ. 7. Ա. իէ. 23.
ժ Հռով. ը. 17. Տիտ. դ. 7. Յակ. բ. 5. ա Պետ. գ. 7.

Յամի Տեառն
64

ա բ Օր. լգ. 2 ։ Սաղ. կը. 17 ։ Գործ. է. 53 ։ Գաղ. գ. 19 ։
բ Թու. ժե. 30, 31 ։ բ Օր. դ. 3 ։ ժէ. 2, 5, 12 ։ ժէ. 26 ։
գ Գլ. ժ. 28, 29 ։ ժբ. 25 ։
դ Մատ. դ. 17 ։ Մար. ա. 14 ։ Գլ. ա. 2 ։
ե Ղու. ա. 2 ։
զ Մար. ժզ. 20 ։ Գոր. ժդ. 3 ։ ժթ. 11 ։ Հռով. ժե. 18, 19 ։ ա Կոր. բ. 4 ։
է Գոր. բ. 22, 43 ։
ը ա Կոր. ժբ. 4, 7, 11 ։
թ Եփե. ա. 5, 9 ։
ժ Գլ. զ. 5 ։ բ Պետ. գ. 13 ։
ի Յոբ. է. 17 ։ Սաղ. ը. 4 ։ Ժող. ծխգ. 3 ։
լ Մատ. իը. 18 ։ ա Կոր. ժե. 27 ։ Եփե. ա. 22 ։ Գլ. ա. 13 ։
խ ա Կոր. ժե. 25 ։
ծ Գործ. բ. 33 ։
կ Փիլ. 2, 7, 8, 9 ։
հ Յով. գ. 16 ։ ժբ. 32 ։ Հռով. ե. 18 ։ ը. 32 ։ բ Կոր. ե. 15 ։ ա Տիմ. բ. 6 ։ ա Յով. բ. 2 ։ Յայտ. ե. 9 ։
ձ Ղու. իգ. 46 ։
ղ Հռով. ժա. 36 ։
ճ Գործ. գ. 15 ։ ե. 31 ։ Գլ. ժբ. 2 ։
մ Ղու. ժգ. 32 ։ Գլ. ե. 9 ։
յ Գլ. ժ. 10, 14 ։
ն Գործ. ժէ. 26 ։
շ Մատ. իը. 10 ։ Յով. ի. 17 ։ Հռով. ը. 29 ։
ո Սաղ. իբ. 22, 25 ։
չ Սաղ. ժը. 2 ։ Եբ. ժբ. 2 ։ դ Եբ. ը. 18 ։ ջ Յով. ժ. 29 ։ ժէ. 6, 9, 11, 12 ։ ա Յով. ա. 14 ։ Հռով. ը. 3 ։ Փիլ. բ. 7 ։

։ր վրայ առնելու խոնարհեցաւ ։ 14 Մինչև
ինտոր որ հարկաւոր էր ։

1 Անոր համար պէտք է մեզի՝ ալ ա-
ւելի ուշադրութիւն տալ մեր
լսած բաներուն, որ չըլլայ թէ եր-
2 բեք պակսինք ։ Վասն զի թէ որ ան
խօսքը՝ ա որ հրեշտակներուն ձեռ-
քովը գրուեցաւ, հաստատուն
եղաւ, բ և ամէն յանցաւորութիւն
ու անհնազանդութիւն արդար հա-
3 տուցում առաւ, գ հապա մենք ին-
տո՞ր պիտի ազատինք՝ թէ որ անհոգ
ըլլանք անանկ մեծ փրկութենէ մը,
դ որ խօսելուն սկիզբը Տէրոջմէն ա-
ռաւ, ե ու լսողներուն ձեռքովը
4 մեզի հաստատուեցաւ ։ զ Աստուած
ալ վկայեց նշաններով ու հրաշք-
ներով՝ և զանազան զօրութիւննե-
րով՝ է ու Սուրբ Հոգիին պարգևնե-
րովը՝ ը ինտոր որ ինքը կամեցաւ ։
5 Ինչու որ չէ թէ հրեշտակներուն
հնազանդեցուց ժ ան գալու աշ-
խարհը, որուն վրայով մենք կը խօ-
6 սինք ։ Հապա մէկը՝ մէկ տեղ մը
վկայեց՝ ու ըսաւ ։ ի Մարդը ի՞նչ
է՝ որ զանիկայ կը յիշես, կամ
մարդու որդին՝ որ անոր այցելու-
7 թիւն կ'ընես ։ Քիչ մը վար ըրիր
զանիկայ հրեշտակներէն, փառքով
ու պատուով պսակեցիր զանիկայ,
և քու ձեռացդ գործքերուն վրայ
8 կեցուցիր զանիկայ ։ լ Ամէն բան
անոր ոտքերուն տակը հնազանդե-
ցուցիր ։ ուստի ամէնը որ անոր
հնազանդեցուց, անոր չհնազանդած
բան մը չձգեց ։ խ բայց հիմա դեռ
չենք տեսներ ամէնը անոր հնազան-
9 դած ։ ծ Սակայն Յիսուսը փառքով
ու պատիւով պսակուած կը տես-
նենք՝ կ որ հրեշտակներէն քիչ մը
վար եղած էր՝ մահուան չարչարան-
քին համար, որ Աստուծոյ շնորհ-
քովը հ ամէնուն համար մահ ճա-
10 շակէ ։ ձ Որովհետև կը վայլէր Անոր,
( ղ որուն համար ամէնը՝ և անով
ամէն բաները եղած են, ) շատ որ-
դիներ փառքին մէջ մտցնելու ա-
տենը՝ ճ անոնց փրկութեան Առաջ-
նորդը մ չարչարանքով կատարել ։
11 յ Վասն զի ան որ կը սրբէ՝ ու ան
որ կը սրբուի, ն ամէնն ալ մէկէ
մըն են ։ շ անոր համար ինքը ամօթ
չսեպեր եղբայր կոչել զանոնք՝ ըսե-
12 լով ։ ո Քու անունդ եղբայրներուս
պիտի պատմեմ, ժողովքին մէջ
13 քեզ պիտի գովեմ ։ Եւ դարձեալ՝
չ Ես անոր պիտի յուսամ ։ ու դար-
ձեալ՝ դ Ահա ես՝ ու ան զաւակները՝
14 ջ որ Աստուած ինծի տուաւ ։ Ուստի
որովհետև զաւակները մարմինին ու
արիւնին հաղորդ եղան, ա ինքն ալ
նմանապէս անոնց բաժանորդ ե-
ղաւ ։ բ որ իր մահովը փճացնէ ա-
նիկայ՝ որ մահուան իշխանութիւնը
ունէր, այսինքն է՝ Սատանան ։
15 գ Եւ ազատէ զանոնք որ մահուան
վախովը միշտ ծառայութեան մէջ
16 կ'ապրէին ։ Քանզի բնաւ հրեշտակ-
ներուն ձեռք չբռներ, հապա Աբ-
րահամի սերունդին ձեռք կը բռնէ ։
17 դ Անոր համար պէտք էր անոր բոլո-
րովին եղբայրներուն նման ըլլալ,
ե որ ինքը ողորմած ըլլայ ու հաւա-
տարիմ քահանայապետ Աստուծոյ
կողմանէ, ժողովուրդին մեղքերը
18 քաւելու համար ։ զ Քանզի ինչ
բանով որ ինքը չարչարուեցաւ՝
փորձութիւն կրելով, կրնայ փոր-
ձանաւորներուն ալ օգնական ըլ-
լալ ։

Յամի Տեառն
64

ա ա Կոր. ժե. 54, 55 ։ Կող. բ. 15 ։ բ Տիմ. ա. 10 ։
գ Ղու. ա. 74 ։ Հռով. ը. 15 ։ բ Տիմ. ա. 7 ։
դ Փիլ. բ. 7 ։
ե Գլ. դ. 15 ։ ե. 1. 2 ։
զ Գլ. դ. 15, 16 ։ ե. 2 ։ է. 25 ։

## ԳԼ. Գ

1 Քրիստոս Մովսէսէն աւելի փառքի արժա-
նաւոր է ։ 7 ուստի թէ որ մենք իրեն չհաւա-
տանք՝ աւելի պատժոյ արժանի պիտի ըլլանք,
քան թէ խստասիրտ Իսրայէլացիները ։

1 Ուստի սուրբ եղբայրներ՝ ա երկ-
նային կոչումին մասնակիցներ,
բ նայեցէք մեր դաւանութեանը Ա-
ռաքեալին՝ ու Քահանայապետին՝
2 Քրիստոս Յիսուսին ։ Որ հաւատա-
րիմ է անոր՝ որ զինքը դրաւ, գ ինչ-
պէս որ Մովսէս ալ անոր բոլոր
3 տանը մէջ ։ Ինչու որ ինքը Մով-
սէսէն այնչափ աւելի փառքի արժա-
նացաւ, դ որչափ որ աւելի պատիւ
կ'ունենայ տանը շինողը՝ քան թէ
4 տունը ։ Քանզի ամէն տուն որ կը
շինուի, մէկէ մը կը շինուի ։ ե բայց
ան որ ամէն բաները ըրաւ, Աս-
5 տուած է ։ Եւ զ յիրաւի Մովսէս
անոր բոլոր տանը մէջ հաւատարիմ
էր է ծառայի մը պէս՝ ը գրուելու
լու բաներուն վկայ ըլլալու համար ։
6 թ Բայց Քրիստոս որդիի մը պէս իր
տանը վրայ ։ ժ որուն տունը մենք
ենք, ի միայն թէ ան համարձակու-
թիւնը և յոյսին պարծանքը մինչև
վերջը հաստատ բռնենք ։
7 լ Ուստի ինչպէս որ կ'ըսէ Հոգին
Սուրբ ։ խ Այսօր թէ որ անոր ձայնին
8 պիտի լսէք, Ձեր սիրտերը մի՛
խստացնէք բարկացնելու ատենին
պէս անապատին մէջ փորձութեան
9 օրը ։ Ուր որ ձեր հայրերը զիս
փորձեցին ։ քննեցին զիս՝ ծ Ե-ղեռ-
քառասուն տարի իմ գործքերս տե-
10 սան ։ Անոր համար զզուեցայ ան
ազգէն, ու ըսի ։ Միշտ մոլորած
են սրտովին, և իմ ճամբաներս
11 չճանչցան անոնք ։ Ուստի երդում
ըրի իմ բարկութեանս մէջ թէ իմ
12 հանգիստս պիտի չմտնեն ։ Նա-
յեցէ՛ք եղբայրներ, չըլլայ որ ձեզմէ
մէկուն ներսի դին անհաւատու-

ա Հռով. ա. 7 ։ ա Կոր. ա. 2 ։ Եփե. դ. 1 ։ Փիլ. գ. 14 ։ բ Թես. ա. 11 ։ բ Տիմ. ա. 9 ։ բ Պետ. ա. 10 ։
բ Հռով. ժե. 8 ։ Գլ. բ. 17 ։ դ. 14 ։ ե. 5 ։ զ. 20 ։ ը. 1 ։ թ. 11 ։ ժ. 21 ։
գ Թու. ժբ. 7 ։ Համր 5 ։
դ Զաք. զ. 12 ։ Մատ. ժզ. 18 ։
ե Եփե. բ. 10 ։ գ. 9 ։ Գլ. ա. 2 ։
զ Համր 2 ։
է Ել. ժդ. 31 ։ Թու. ժբ. 7 ։ բ Օր. գ. 24 ։ Յես. ա. 2 ։
ը ը. 31 ։
ը բ Օր. ժը. 15, 18, 19 ։
թ Գլ. ա. 2 ։
ժ ա Կոր. գ. 16 ։ զ. 19 ։ բ Կոր. զ. 16 ։ Եփե. բ. 21, 22 ։ ա Տիմ. գ. 15 ։ ա Պետ. բ. 5 ։
ի Համր 14 ։ Մատ. ժ. 22 ։ իդ. 13 ։ Հռով. ե. 2 ։ Կող. ա. 23 ։ Գլ. զ. 11 ։ ժ. 35 ։
լ բ Թագ. իգ. 2 ։ Գործ. ա. 16 ։
խ Համր 15 ։ Սաղ. ղե. 7 ։

Յամի Տեառն
64

[ծ] Հմր 6։
[կ] Հմր 7։
[հ] Թուոց. ժդ. 2, 4, 11, 24, 30։ Բ Օր. ա. 34, 36, 38։
* Կամ որո՞նք լսեցին ու բարկացուցին, չէ՞ որ
[ձ] Թուոց. ժդ. 22, 29, 37։ Իզ. 65։ Սաղ. ճզ. 26։ Ա Կոր. ժ. 5։ Յուդ. 5։
[ղ] Թուոց. ժդ. 30։ Բ Օր. ա. 34, 35։
[ճ] Գլ. դ. 6։

թեան չար սիրտ ըլլայ՝ ապստամբ
13 ըլլալու կենդանի Աստուծմէն. Հա-
պա ամէն օր մէկզմէկ յորդորեցէք՝
քանի որ այսօր կ'ըսուի. որ չըլլայ
թէ ձեզմէ մէկը խստանայ մեղքին
14 խաբէութիւնովը. Քանզի մենք
Քրիստոսի մասնակից եղած ենք,
[ծ]միայն թէ ան հաստատութեան
սկիզբը մինչև վերջը պինդ բռնենք.
15 Քանի որ կ'ըսուի, [կ]Այսօր թէ որ
անոր ձայնին պիտի լսէք, ձեր սիր-
տերը մի խստացընէք բարկացընե-
16 լու ատենին պէս։ [հ]Քանզի *ոմանք
լսեցին ու բարկացուցին. բայց չէ
թէ ան ամէնը որ Եգիպտոսէն ելած
17 էին Մովսէսին ձեռքովը։ Որոնցմէ՞
զզուեցաւ անքառասուն տարին. չէ՞
որ մեղանչողներէն, [ձ]որոնց ոսկոր-
18 ները անապատին մէջը ինկան։ Եւ
[ղ]որո՞նց համար երդում ըրաւ իր
հանգիստը չմտնելու, եթէ ոչ՝ ան-
19 հաւատներուն համար։ [ճ]Եւ կը տես-
նենք որ չկրցան մտնել իրենց ան-
հաւատութեանը համար։

ԳԼ. Դ

1 Քրիստոնեաները հաւատքով ձեռք պիտի բերեն իրենց հանգիստը։ 12 Աստուծոյ խօսքին ազդեցութիւնը։ 14 Որովհետև մենք մեծ քահանայապետ ունինք Յիսուսը Աստուծոյ Որդին, որ մեր տկարութիւններուն հաղորդ եղաւ, բայց առանց մեղքի, 16 կարող ենք և պարտինք անոր միջոցովը համարձակօրէն երթալ շնորհաց աթոռին առջևը։

[ա] Գլ. ժբ. 15։
[բ] Գլ. գ. 14։
[գ] Սաղ. ղե. 11։ Գլ. գ. 11։
[դ] Ծն. բ. 2։ Ել. ի. 11։ Լա. 17։
[ե] Գլ. գ. 19։
[զ] Սաղ. ղե. 7։ Գլ. գ. 7։

1 [ա]Ուրեմն ալ վախնանք, որ չըլլայ
թէ անոր հանգիստը մտնելու
խոստմունքը որ մեզի մնացեր է,
ձեզմէ մէկը անկէ զրկուած գտնուի։
2 Ինչու որ մենք ալ անոնց պէս ա-
ւետիս առած ենք. բայց անոնց շահ
մը չըրաւ ան խօսքը լսելը, քանզի
հաւատքով խառնուած չէր լսողնե-
3 րուն մէջ։ [բ]Իսկ մենք՝ որ հաւա-
տացինք, հանգիստը կը մտնենք.
ինչպէս որ ըսաւ, [գ]Ուստի երդում
ըրի իմ բարկութեանս մէջ թէ՝ Իմ
հանգիստս պիտի չմտնեն. թէև
իր գործքերը աշխարհի սկիզբէն ե-
4 ղած էին։ Ինչու որ Գիրքը ասանկ
կ'ըսէ մէկ տեղ մը՝ եօթներորդ օ-
րուանը համար. [դ]Եւ Աստուած
եօթներորդ օրը հանգչեցաւ իր բո-
5 լոր գործքերէն. Ու հոս նորէն կ'ը-
սէ թէ՝ Իմ հանգիստս պիտի չմըտ-
6 նեն։ Ուստի որովհետև ոմանց կը
մնայ հոն մտնել, [ե]և անոնք որ ա-
ռաջուց աւետիսը առած էին, ան-
հաւատութեան համար չմտան.
7 Նորէն օր մը կը սահմանէ՝ ու կ'ըսէ
Այսօրը Դաւիթին բերնովը այնքան
ժամանակէ ետև, ինչպէս որ ը-
սուեցաւ. [զ]Այսօր թէ որ անոր ձայ-
նին պիտի լսէք, ձեր սիրտերը մի՝
8 խստացընէք։ Ինչու որ եթէ Յե-
սուն հանգչեցուցած ըլլար զանոնք,

ալ անկէ ետքը ուրիշ օրուան հա-
9 մար չէր զրուցեր։ Ուրեմն Աստու-
ծոյ ժողովուրդին շաբաթ հանգիստ մը
10 կը մնայ։ Վասն զի ան որ անոր
հանգիստը մտաւ, ալ հանգչեցաւ
իր գործքերէն, ինչպէս որ Աստուած
11 իր իրեններէն։ Ուրեմն ջանանք
ան հանգիստը մտնելու. [է]որ չըլլայ
թէ մէկը նոյն անհաւատութեան
12 օրինակին պէս իյնայ։ Ինչու որ
Աստուծոյ խօսքը [ը]կենդանի է ու
զօրեղ՝ [թ]և ամէն երկսայրի սուրէ
կտրուկ, որ կը թափանցէ մինչև
շունչը ու ոգին՝ և յօդուածները ու
ծուծը բաժնելու, [ի]և կը քննէ սըր-
տին խորհուրդները ու մտածմունք-
13 ները. [լ]Եւ չկայ մէկ արարած մը
անոր դիմացը չերևցած. [խ]Հապա
ամէն բան բաց ու յայտնի է անոր
աչքերուն առջևը, որուն պիտի տը-
րուի մեր հաշիւը։
14 [ծ]Արդ՝ մենք որ մեծ քահանայա-
պետ մը ունինք [կ]երկինքը անցած,
Յիսուսը՝ Աստուծոյ Որդին, [հ]ա-
մուր բռնենք մեր դաւանութիւնը։
15 [ձ]Քանզի չէ՛ թէ անանկ քահանա-
յապետ մը ունինք՝ որ կարող չըլ-
լայ մեր տկարութիւններուն կարե-
կից ըլլալու. [ղ]Հապա ինքը ամէն
կերպով փորձը առած է մեզի նման,
16 [ճ]բայց առանց մեղքի։ [մ]Ուստի ալ
համարձակութիւնով մօտենանք
շնորհաց աթոռին առջևը, որ ո-
ղորմութիւն ընդունինք՝ ու շնորհք
գտնենք պէտք եղած ատենը մեզի
օգնելու։

ԳԼ. Ե

1 Մեր Փրկչին քահանայական իշխանութիւնը և պատիւը։ 11 Առաքեալը կը յանդիմանէ աս բանիս գիտութեանը վրայով անհոգ եղողները։

1 Ինչու որ ամէն քահանայապետ
մարդոց մէջէն առնուած՝ [ա]մար-
դոց համար կը կենայ [բ]Աստուծոյ
կողմը, [գ]որ պատարագներ ու զոհեր
2 մատուցանէ մեղքերու համար. [դ]Եւ
կարող է կարեկից ըլլալ անոնց՝ որ
տգէտ ու մոլորեալ են. [ե]ինչու որ
ինքն ալ տկարութիւնով պաշա-
3 րուած է. [զ]Եւ աս պատճառով
պարտաւոր է ինչպէս ժողովուրդին
համար՝ անանկ ալ իր անձին համար
մեղքի պատարագ մատուցանել։
4 [է]Եւ չէ՛ թէ մէկը ինքիրմէ այս պա-
տիւը կ'առնէ, հապա ան որ Աս-
տուծմէ կանչուած է՝ [ը]ինչպէս որ Ա-
5 հարոնը։ [թ]Անանկ ալ Քրիստոս չէ՛
թէ իր անձը մեծարեց քահանայա-
պետ ըլլալու, հապա անիկայ՝ որ զը-
րուցեց անոր թէ՝ [ժ]Դուն իմ Որդիս
6 ես, ես այսօր քեզ ծնայ. Ինչպէս ու-
րիշ տեղ մըն ալ կ'ըսէ. [ի]Դուն յաւի-
տեան քահանայ ես Մելքիսեդեկի

Յամի Տեառն
64

[է] Գլ. գ. 12, 18, 19։
[ը] Ես. խթ. 2։ Երեմ. իգ. 29։ Բ Կոր. ժ. 4, 5։ Ա Պետ. ա. 23։
[թ] Առակ. ե. 4։
[ժ] Եփե. զ. 17։ Յայտ. ա. 16։ բ. 16։
[ի] Ա Կոր. ժդ. 24, 25։
[լ] Սաղ. լգ. 13, 14։ դ. 8։ ճլթ. 11, 12։
[խ] Յոբ. իզ. 6։ լդ. 21։ Առակ. ժե. 11։
[ծ] Գլ. գ. 1։
[կ] Գլ. է. 26։ ը. 12, 24։
[հ] Գլ. ժ. 23։
[ձ] Ես. ծգ. 3։ Գլ. բ. 18։
[ղ] Ղուկ. իբ. 28։
[ճ] Բ Կոր. ե. 21։ Գլ. է. 26։ Ա Պետ. բ. 22։ Ա Յովհ. գ. 5։
[մ] Եփե. բ. 18։ գ. 12։ Գլ. ժ. 19, 21, 22։

[ա] Գլ. ը. 3։
[բ] Գլ. բ. 17։
[գ] Գլ. ը. 3, 4։ թ. 9։ ժ. 11։ ժա. 4։
[դ] Գլ. բ. 18։ դ. 15։
[ե] Գլ. է. 28։
[զ] Ղևտ. դ. 3։ թ. 7։ ժզ. 6, 15, 16, 17։ Գլ. է. 27։ թ. 7։
[է] Բ Մն. իզ. 18։ Յովհ. գ. 27։
[ը] Ել. իը. 1։ Թուոց. ժզ. 5, 40։ Ա Մն. իգ. 13։
[թ] Յովհ. ը. 54։
[ժ] Սաղ. բ. 7։ Գլ. ա. 5։
[ի] Սաղ. ճժ. 4։ Գլ. է. 17, 21։

7 կարգին պէս ։ Որ իր մարմնին
օրերը նաստիկ գոչումով ու ար-
ցունքով աղօթք և աղաչանք
մատուց անոր՝ որ կարող էր
զինքը մահուանէ ազատելու, ու
լսուեցաւ՝ իր *երկիւղէն ազատելով.
8 Թէպէտ ինքը Որդի է, բայց իր
չարչարանքներէն հնազանդութիւն
9 սորվեցաւ. Ու երբոր կատարուե-
ցաւ, բոլոր իրեն հնազանդողնե-
րուն յաւիտենական փրկութեանը
10 պատճառ եղաւ. Ու Աստուծմէ
կոչուեցաւ Քահանայապետ Մել-
11 քիսեդեկի կարգին պէս ։ Որուն
վրայով շատ ըսելիք ունինք, որ
դժուարին ալ է մեկնելու, ինչու
որ ձեր լսելիքները բթացած են.
12 Որ պէտք էր ձեզի ժամանակին նա-
յելով սորվեցնող ըլլալ. բայց
նորէն պէտք է ձեզի սորվիլ թէ
ինչ են Աստուծոյ պատգամնե-
րուն առջի սկզբունքները. Ու
դուք կաթի կարօտ եղաք, և չէ թէ
13 հաստատուն կերակուրի ։ Քանզի
ան ամէնը որ կաթնկեր է, արդա-
րութեան խօսքին անհմուտ է,
14 որովհետև տղայ է ։ Բայց հաս-
տատուն կերակուրը կատարեալնե-
րուն է, որոնց զգայարանքները
սովորութեամբ կրթուած են բա-
րին ու չարը զանազանելու ։

ԳԼ. Զ

1 Կը յորդորէ որ հաւատքէն չիյնան, 11 հապա հաստատուն, 12 և ջանացող ըլլան, ու համբերութեամբ Աստուծոյ ապաւինին ։ 13 վասն զի Աստուած հաստատուն է իր խոստմունքներուն մէջ ։

1 Ուստի Քրիստոսի վրայով առջի
սորվելիքները ձգելով՝ կատա-
րեալին գանք. առանց նորէն հիմ
ձգելու մեռած գործքերէն ապաշ-
խարելու՝ ու դէպ 'ի Աստուած
2 հաւատք ունենալու, Եւ մկրտու-
թիւններուն վարդապետութեանը,
ու ձեռք դնելուն, և մեռելնե-
րուն յարութեանը, ու յաւի-
3 տենական դատաստանին ։ Եւ աս
պիտի ընենք, եթէ որ Աստուած
4 հրաման տայ ։ Ինչու որ անճար
է մէկ անգամ լուսաւորուածնե-
րուն՝ որոնք երկնաւոր պարգևին
համը առին, ու Հոգւոյն Սրբոյ
5 հաղորդ եղան, և Աստուծոյ բարի
խօսքին ու գալու աշխարհին զօ-
6 րութիւններուն համը առին, թէ որ
իյնան, նորէն ապաշխարութիւ-
նով նորոգուիլ. որովհետև կըր-
կին Աստուծոյ Որդին խաչը կը
հանեն իրենց անձին, ու կը խայ-
7 տառակեն ։ Ինչու որ ան երկիրը՝
որ իր վրայ շատ անգամ եկած
անձրևը կը խմէ, և արդիւնք կը
բերէ պիտանի անոնց՝ որոնց հա-
մար որ կը մշակուի, Աստուծմէ
8 օրհնութիւն կ'ընդունի. Բայց ան
որ փուշեր ու տատասկներ կը բե-
րէ՝ անպիտան է, ու անէծքի մօտ.
9 և անոր վերջը այրուիլ է ։ Իսկ
մենք սիրելիներ՝ ձեր վրայով լա-
ւագոյն և փրկութեան վերաբե-
րեալ յոյսեր ունինք, թէև ասանկ
10 կը խօսինք ։ Քանզի Աստուած
անիրաւ չէ, որ ձեր գործը մոռ-
նայ, ու ան սէրը՝ որ իր անուանը
համար ցուցուցիք, որ սուրբե-
րուն ծառայեցիք՝ ու կը ծառա-
յէք ։
11 Բայց մենք կը բաղձանք որ ձեզ-
մէ ամէն մէկը նոյն ջանքը ցուցընէ
յոյսին հաստատուելուն մինչև
12 վերջը. Որ դուք չհեղգանաք. հա-
պա նմանող ըլլաք անոնց՝ որ հա-
ւատքով ու համբերութիւնով
խոստմունքները ժառանգեցին ։
13 Վասն զի երբոր Աստուած Աբրա-
համին խոստմունք ըրաւ, որովհե-
տև իրմէ մեծը չկար՝ որ անոր վը-
14 րայ երդում ընէր, իր անձին վրայ
երդում ըրաւ՝ ու ըսաւ. Այո
օրհնելով պիտի օրհնեմ քեզ. ու
շատցնելով պիտի շատցնեմ
15 քեզ ։ Եւ այսպէս համբերելով՝
16 խոստմունքին հասաւ. Քանզի
մարդիկ իրենցմէ մեծին վրայ եր-
դում կ'ընեն. ու անոնց բոլոր
հակառակութեանը հաստատ վը-
17 ճիռ տալու՝ երդումն է ։ Որ ա-
նով Աստուած իր խորհուրդին
անփոփոխ ըլլալը ալ աւելի ցու-
ցընել ուզելով խոստմունքին
ժառանգաւորներուն, երդումը
18 մէջ ձգեց. Որ երկու անփոփոխելի
բաներով՝ որոնցմով անկարելի է
Աստուծոյ սուտ ըլլալ, հաս-
տատուն մխիթարութիւն ունե-
նանք մենք՝ որ ապաստանեցանք
առջևնիս դրուած յոյսը ամուր
19 բռնելու. Որ ան յոյսը ունենանք
իբրև մէկ հաստատ ու անշարժ
խարիսխ մը մեր անձին, որ վա-
րագուրին ներսի կողմն ալ կը
20 մտնէ. Ուր որ Յիսուս իբրև Ա-
ռաջնորդ մտաւ մեզի համար՝ յա-
ւիտենական Քահանայապետ ըլ-
լալով՝ Մելքիսեդեկի կարգին պէս.

ԳԼ. Է

1 Առաքեալը կը ցուցընէ թէ Յիսուս Քրիստոս Քահանայապետ է Մելքիսեդեկի կարգին պէս, 11 և աս պատճառով խիստ գերազանց է Ահարոնի կարգէն եղող քահանաներէն ։

1 Քանզի աս Մելքիսեդեկը Սաղէ-
մի թագաւորն էր՝ Բարձրեալ
Աստուծոյ քահանան. որ ինքը Աբ-
րահամը դիմաւորեց՝ երբոր անիկայ
թագաւորներուն կոտորածէն կը
2 դառնար, ու օրհնեց զանիկայ. Ո-

Յամի Տեառն 64

Սաղ. իբ. 1 ։ Մատ. իէ. 46, 50 ։ Մար. ժե. 34, 37 ։ Մատ. իզ. 39, 42, 44 ։ Մար. ժդ. 36, 39 ։ Յով. ժէ. 1 ։ Մատ. իզ. 53 ։ Մար. ժդ. 36 ։ Մատ. իզ. 37 ։ Մար. ժդ. 33 ։ Ղուկ. իբ. 43 ։ Յով. ժբ. 27 ։ * Կամ բարեպաշտութեանը պատճառով. Գլ. գ. 6 ։ Փիլ. բ. 8 ։ Գլ. բ. 10 ։ ժա. 40 ։ Հմր 6 ։ Գլ. զ. 20 ։ Յով. ժզ. 12 ։ բ Պետ. գ. 16 ։ Մատ. ժգ. 15 ։ Գլ. զ. 1 ։ ա Կոր. գ. 1, 2, 3 ։ ա Կոր. ժգ. 11 ։ ժդ. 20 ։ Եփե. դ. 14 ։ ա Պետ. բ. 2 ։ Եսա. է. 15 ։ ա Կոր. բ. 14, 15 ։

Փիլ. գ. 12, 13, 14 ։ Գլ. ե. 12 ։ Գլ. թ. 14 ։ Գոր. ժթ. 4, 5 ։ Գոր. ը. 14, 15, 16, 17 ։ ժթ. 6 ։ Գոր. ժէ. 31, 32 ։ Գոր. իդ. 25 ։ Հռով. բ. 16 ։ Գոր. ժը. 21 ։ ա Կոր. դ. 19 ։ Մատ. ժբ. 31, 32 ։ Գլ. ժ. 26 ։ բ Պետ. բ. 20, 21 ։ ա Յով. ե. 16 ։ Գլ. ժ. 32 ։ Յով. դ. 10 ։ զ. 32 ։ Եփե. բ. 8 ։ Գաղ. գ. 2, 5 ։ Գլ. բ. 4 ։ Գլ. բ. 5 ։ Գլ. ժ. 29 ։

Յամի Տեառն 64

Սաղ. կե. 10 ։ Եսա. ե. 6 ։ Առակ. ժդ. 31 ։ Մատ. ժ. 42 ։ իե. 40 ։ Յով. ժգ. 20 ։ Հռով. զ. 4 ։ բ Թես. ա. 6, 7 ։ ա Թես. ա. 3 ։ Հռով. ժե. 25 ։ բ Կոր. դ. 1 ։ թ. 1, 12 ։ բ Տիմ. ա. 18 ։ Գլ. դ. 6, 11 ։ Գլ. ժ. 36 ։ Ծն. իբ. 16, 17 ։ Սաղ. ծե. 9 ։ Ղուկ. ա. 73 ։ Ելք. իբ. 11 ։ Հռով. ժա. 29 ։ Գլ. ժա. 9 ։ Գլ. ժբ. 1 ։ Ղև. ժզ. 15 ։ Գլ. թ. 7 ։ Գլ. դ. 14 ։ ը. 1 ։ թ. 24 ։ Գլ. դ. 1 ։ ե. 6, 10 ։ է. 17 ։

Ծն. ժդ. 18 ։

Ցամ Տեառն 64

ա Ծն. ժդ. 20։
բ Թու. ժը. 21, 26։
գ Ծն. ժե. 19։
դ Հռով. դ. 13։ Գաղ. գ. 16։
ե Գլ. ե. 6։ զ. 20։
զ Գաղ. բ. 21։ Հմր 12. 19։ Գլ. ը. 7։
է Ես. ժա. 1։ Մատ. ա. 3։ Ղու. գ. 33։ Հռով. ա. 3։ Յայտ. ե. 5։

րուն՝ Աբրահամն ալ տասանորդ
տուաւ բոլոր բաներէն. որ նախ՝
արդարութեան թագաւոր կը
թարգմանուի, ետքը Սաղեմի թա-
գաւոր՝ որ է խաղաղութեան թա-
3 գաւոր. Առանց հօր՝ առանց մօր՝
ազգահամար չունեցող, որ ո՛չ ա-
նոր օրերուն սկիզբը կայ՝ ո՛չ ալ
կեանքին վերջը. և Աստուծոյ Որ-
դւոյն նման ըլլալով՝ կը կենայ ու
կը մնայ միշտ քահանայ։
4 Արդ՝ նայեցէք թէ որչափ մեծ
մէկ մըն էր ասիկայ, որ անոր Ա-
բրահամ նահապետն ալ տասանորդ
5 տուաւ աւարէն։ Եւ Ղևիի որ-
դիներէն եղողները որ քահանայու-
թիւն կ'առնեն, պատուէր ունին
որ ժողովուրդէն տասանորդ առ-
նեն՝ օրէնքին համեմատ, այսինքն՝
իրենց եղբայրներէն. թէպէտև ա-
նոնք Աբրահամին երանքէն ելեր են.
6 Բայց անիկայ՝ որուն ազգահամարը
անոնցմէ չէր, Աբրահամէն տասա-
նորդ առաւ, ու օրհնեց զանիկայ՝
որ խոստումները առած էր։
7 Սակայն ասիկայ անհակառակելի բան
մըն է, որ պզտիկը մեծէն կ'օրհ-
նուի։
8 Եւ հոս մահկանացու մարդիկ
տասանորդ կ'առնեն. բայց հոն
անիկայ կ'առնէ, որուն համար վը-
9 կայուած է թէ կենդանի է։ Եւ
կրնայ ըսուիլ թէ, Ղևին ալ՝ որ
տասանորդ կ'առնէ, Աբրահամին
10 ձեռքովը տասանորդ տուաւ. Ին-
չու որ տակաւին իր հօրը երանքն
էր, երբոր Մելքիսեդեկ զանիկայ
դիմաւորեց։
11 Արդ՝ եթէ որ կատարելութիւնը
Ղևտացւոց քահանայութեան ձեռ-
քովը ըլլար, (որովհետև ժողո-
վուրդը անոր ատենը օրէնքին տա-
կը գրուեցաւ,) ի՞նչ պէտք էր որ
Մելքիսեդեկին կարգին պէս ուրիշ
քահանայ մը ելլէ, ու չըսուի Ահա-
12 րոնին կարգին պէս։ Արդ՝ քահա-
նայութիւնը փոխուելուն պէս,
հարկ էր որ օրէնքին ալ փոփոխու-
13 թիւն ըլլայ։ Եւ [illegible]. Ին-
չու որ ան՝ որուն համար ասանկ
կ'ըսուի, ուրիշ ցեղի հաղորդու-
թիւն ունեցաւ, որ ան ցեղէն բնաւ
14 մէկը սեղանին չմօտեցաւ. Քանզի
յայտնի է թէ Յուդայի ցեղէն յա-
ռաջ եկաւ մեր Տէրը, որ ան ցե-
ղին վրայով Մովսէս բան մը չգրու-
15 ցեց քահանայութեան համար։ Ու
ալ աւելի յայտնի է որ փոխուեցաւ,
քանի որ Մելքիսեդեկին նմանու-
թիւնով ուրիշ քահանայ մը կ'ելլէ,
16 Որ ան չէ թէ մարմնաւոր պատուէ-
րի օրէնքին պէս եղաւ, հապա ան-
վախճան կենաց զօրութեանը պէս։
17 Ինչու որ կը վկայէ թէ՝ Դուն յա-
ւիտեան քահանայ ես Մելքիսեդե-
18 կի կարգին պէս։ Քանզի առջի
պատուէրը կը խափանուի իր տը-
կարութեանը ու անշահութեանը
19 համար, (Ինչու որ օրէնքը մէկ
բան մը կատարեալ չըրաւ,) և նա-
նոր տեղը կը մտնէ լաւագոյն յոյս
մը՝ որով Աստուծոյ կը մօտենանք։
20 Եւ որքան որ Յիսուս՝ չէ թէ
առանց երդումի քահանայ եղաւ.
(Ինչու որ անոնք առանց երդումի
21 քահանայ եղած են. Բայց ասիկայ
երդումով՝ անոր ձեռքովը, որ ի-
րեն ըսաւ. Տէրը երդում ըրաւ,
ու պիտի չզղջայ. Դուն յաւի-
տեան քահանայ ես Մելքիսեդեկի
22 կարգին պէս.) Այնքան աւելի
աղէկ ուխտի մը երաշխաւոր եղաւ
Յիսուս։
23 Ու անոնք շատ քահանաներ եղած
են, իրենց միշտ մնալուն՝ մահը ար-
24 գելք ըլլալուն համար. Բայց ասի-
կայ յաւիտեան կենալուն համար՝
անանցանելի ունի քահանայու-
25 թիւնը. Ուստի բոլորովին կարող
ալ է ապրեցընելու անոնք՝ որ իր-
մով Աստուծոյ կու գան. որով-
հետև ինք միշտ կենդանի է անոնց
համար բարեխօս ըլլալու։
26 Վասն զի մեզի ճիշդ ասանկ քա-
հանայապետ մը կը վայլէր, սուրբ՝
անմեղ՝ անարատ՝ մեղաւորներէն
զատուած՝ ու երկինքէն բարձրա-
27 ցած. Որ անոր ամէն ատեն հարկ
չէ ինչպէս ուրիշ քահանայապետ-
ներուն՝ առաջ իր մեղքերուն հա-
մար պատարագ մատուցանել, ու
ետքը ժողովուրդին մեղքերուն հա-
մար. վասն զի ինքը մէկ անգամ
մը ըրաւ ասիկայ՝ իր անձը պատա-
28 րագ մատուցանելով։ Ինչու որ
օրէնքը տկարութիւնով պաշա-
րուած մարդիկը քահանայապետ
կը կարգէ. բայց երդումին խօսքը՝
որ օրէնքէն ետև էր, Որդին՝ որ
յաւիտեան կատարեալ է։

## ԳԼ. Ը

1 Քրիստոսի յաւիտենական քահանայութեամբը խափանուած է Ղևտական քահանայութիւնը. 7 Նմանապէս նահապետներուն հետ եղած ժամանակաւոր ուխտը խափանուած է աւետարանին յաւիտենական ուխտովը։

1 Այս գրուած խօսքերուս բովան-
դակութիւնը այս է. ասանկ
քահանայապետ մը ունինք մենք՝
որ ինքը երկինքը Աստուծոյ մե-
ծութեանը աթոռին աջ կողմը
2 նստաւ. Սրբարանին պաշտօնեայ,
ու ճշմարիտ խորանին՝ որ Տէրը
3 կանգնեց, և չէ թէ մարդ։ Քանզի
ամէն քահանայապետ պատա-
րագներ ու զոհեր մատուցանելու

Ցամ Տեառն 64

ը Սաղ. ճժ. 4։ Գլ. ե. 6. 10։ զ. 20։
թ Հռով. ը. 3։ Գաղ. դ. 9։
ժ Գոր. ժգ. 39։ Հռով. գ. 20, 21, 28։ ը. 3։ Գաղ. բ. 16։ Գլ. թ. 9։
ի Գլ. զ. 18։ ը. 6։ Գաղ. դ. 24։
լ Հռով. ե. 2։ Եփե. բ. 18։ գ. 12։ Գլ. դ. 16։ ժ. 19։
խ Սաղ. ճժ. 4։
ծ Գլ. ը. 6։ թ. 15։ ժբ. 24։
կ Հռով. ը. 34։ ա Տիմ. բ. 5։ Գլ. թ. 24։ ա Յօհ. բ. 1։
հ Գլ. դ. 15։
ձ Եփե. ա. 30։ դ. 10։ Գլ. ը. 1։
ղ Ղև. թ. 7։ ժզ. 6, 11։ Գլ. ե. 3։ թ. 7։
ճ Ղև. ժզ. 15։
մ Հռով. զ. 10։ Գլ. թ. 12, 28։ ժ. 12։
յ Գլ. ե. 1, 2։
ն Գլ. բ. 10։ ե. 9։

ա Եփե. ա. 20։ Կող. գ. 1։ Գլ. ա. 3։ ժ. 12։ ժբ. 2։
բ Գլ. թ. 8, 12, 24։
գ Գլ. թ. 11։
դ Գլ. ե. 1։

Յամի Տեառն 64

ա Եփե. ե. 2 ։ Գղ. թ. 14 ։
բ Կող. բ. 17 ։ Գղ. թ. 23 ։ ժ. 1 ։
գ Ել. իե. 40 ։ իզ. 30 ։ իէ. 8 ։ Թու. ը. 4 ։ Գոր. է. 44 ։
դ Բ Կոր. գ. 6, 8, 9 ։ Գղ. է. 22 ։
ե Գղ. է. 11, 18 ։
զ Երեմ. լա. 31, 32, 33, 34 ։
է Գղ. ժ. 16 ։
ը Զաք. ը. 8 ։
թ Ես. ծդ. 13 ։ Յօհ. զ. 45 ։ Ա Յօհ. բ. 27 ։
ժ Հռով. ժա. 27 ։ Գղ. ժ. 17 ։
ժա Բ Կոր. ե. 17 ։
— Ել. իե. 8 ։

համար որոշուած է. ուստի հարկ
է որ ասիկայ ալ բան մը ունենայ
4 մատուցանելու ։ Որ եթէ երկրի
վրայ ըլլար, քահանայ անգամ
պիտի չըլլար. ինչու որ կան քա-
հանաներ՝ որոնք պատարագներ կը
մատուցանեն օրէնքին համեմատ.
5 (Որ անոնք երկնային բաներուն
նմանութիւնովը ու շուքովը կը
ծառայեն. ինչպէս որ Մովսէսին
ապսպրուեցաւ՝ երբոր խորանը
պիտի շինէր. քանզի ըսաւ. Նա-
յէ որ լեռը քեզի ցուցուած օրի-
6 նակին պէս շինես ամէնը.) Բայց
հիմա Յիսուս աւելի գերա-
զանց պաշտօնի մը հասաւ, որչափ
որ լաւագոյն խոստմունքներով
հաստատուած լաւագոյն ուխտի մը
միջնորդ է ։
7 Ինչու որ եթէ առաջինը անմե-
ղադրելի ըլլար, երկրորդին
8 տեղ չէր փնտռուեր ։ Քանզի կը
յանդիմանէ անոնք ու կ'ըսէ. Ա-
հա օրեր կու գան՝ կ'ըսէ Տէրը, որ
Իսրայէլի տանը հետ ու Յուդայի
տանը հետ նոր ուխտ պիտի ընեմ.
9 Չէ թէ ան ուխտին պէս՝ որ անոնց
հայրերուն հետ ըրի, ան օրը որ
անոնց ձեռքէն բռնեցի՝ զանոնք
Եգիպտոսի երկրէն հանելու հա-
մար. ինչու որ անոնք իմ ուխտիս
մէջ չկեցան, ես ալ անհոգ եղայ
10 անոնց վրայով՝ կ'ըսէ Տէրը ։ Քան-
զի աս է ան ուխտը՝ որ Իսրայէլի
տանը հետ պիտի ընեմ ան օրերէն
ետքը՝ կ'ըսէ Տէրը. իմ օրէնքներս
անոնց միտքին մէջը պիտի դնեմ,
և անոնց սրտին վրայ պիտի գրեմ
զանոնք, ու ես անոնց Աստուած
պիտի ըլլամ, և անոնք ինծի ժո-
11 ղովուրդ պիտի ըլլան ։ Ու բնաւ
պիտի չսորվեցընեն ամէն մէկը իր
քաղաքացիին, և ամէն մէկը իր
եղբօրը, ըսելով թէ՝ Տէրը ճանչ-
ցիր. ինչու որ անոնց պզտիկէն
մինչև մեծը ամէնը զիս պիտի ճանչ-
12 նան. Վասն զի ես անոնց անիրա-
ւութիւններուն ներող պիտի ըլ-
լամ, և անոնց մեղքերը ու անօրէ-
նութիւնները ալ պիտի չյիշեմ ։
13 Նոր ուխտ ըսելովը՝ առաջինը
հինցուց. ու ան որ կը հիննայ և կը
ծերանայ՝ ալ կորստեան մօտ է ։

## ԳԼ. Թ

1 Առաջուանը օրէնքին ծէսերը և արիւնով եղած զոհերը նկարագրելով՝ 11 կը ցուցընէ թէ անոնք շատ ստորին էին Քրիստոսի զոհին և արիւնին արժանաւորութեանը ու կատարելութեանը նայելով ։

1 Արդարև առաջին ուխտն ալ ունէր
պաշտամունքին արարողու-
թիւնները, ու աշխարհային սուրբ
2 տեղը ։ Ինչու որ առաջին խորա-
նը որ Սրբութիւն կ'ըսուէր,
կազմուեցաւ, որուն մէջը էր
աշտանակը՝ ու սեղանը՝ և ա-
3 ռաջաւորութեան հացը ։ Եւ երկ-
րորդ վարագոյրին ետին ան խորա-
նը՝ որ Սրբութիւն սրբութեանց
4 կ'ըսուէր. Որուն մէջն էր ոսկի
բուրվառը, և ուխտին տապանա-
կը՝ ամէն կողմէն ոսկիով պատած.
որուն մէջն էր ոսկիէ սափորը
մանանայով լեցուն, և Ահարո-
նին գաւազանը՝ որ ծաղկեցաւ,
5 և ուխտին տախտակները. Եւ
անոր վրայէն փառաց քերովբէնե-
րը՝ որ քաւութիւնին վրայ հովանի
կ'ընէին. որոնց համար պէտք չէ
հիմա մէկիկ մէկիկ զրուցել ։
6 Եւ աս բաները այսպէս կարգադ-
րուած ըլլալով, առաջին խորանը
ամէն ատեն կը մտնէին քահանա-
ները՝ պաշտամունքը կատարելու.
7 Բայց երկրորդը՝ տարին անգամ
մը՝ միայն քահանայապետը կը մը-
նէր, այն ալ չէ թէ առանց արիւնի,
որն որ իրեն համար՝ ու ժողո-
վուրդին սխալմունքներուն համար
8 կը մատուցանէր, Հոգին Սուրբ աս
ցուցընելով՝ թէ սրբարանին ճա-
նապարհը յայտնի եղած չէր, քանի
որ տակաւին առջի խորանը կը կե-
9 նար. Որ ան օրինակ մըն էր ան
ժամանակին՝ որ պատարագներ ու
զոհեր կը մատուցուէին, որոնք
խղճմտանքի կողմանէ չէին կրնար
կատարեալ ընել պաշտօն մատու-
ցանողը. հապա միայն կերակուր-
10 ներով ու խմելիքներով, Եւ կերպ
կերպ լուացումներով՝ մարմնաւոր
արարողութիւններ էին, որոնք
մինչև ուղղութեան ատենը կը կե-
11 նային ։ Բայց Քրիստոս որ եկաւ՝
գալու բարիքներուն քահանա-
յապետը՝ աւելի մեծ ու կատա-
րեալ և անձեռագործ խորանով,
այսինքն՝ ան որ աս ստեղծուած-
12 ներէն չէ, Ո՛չ ալ նոխազներու
ու զուարակներու արիւնով, հապա
իր արիւնովը, մէկ անգամ մը
սրբարանը մտաւ՝ յաւիտենական
13 փրկութիւն ստանալով ։ Վասն
զի թէ որ ցուլերուն ու նոխազ-
ներուն արիւնը՝ և երինջին մո-
խիրը սրսկուելով՝ պղծեալները կը
սրբէր մարմինի մաքրութեան կող-
14 մանէ. Ալ որչափ աւելի Քրիս-
տոսի արիւնը՝ որ յաւիտենական
Հոգիին ձեռքովը իր անձը անա-
րատ պատարագ մատուց Աստուծոյ,

Յամի Տեառն 64

ա Ել. իզ. 1 ։
բ Ել. իզ. 35 ։ խ. 4 ։
գ Ել. իե. 31 ։
դ Ել. իե. 23, 30 ։ Ղև. իդ. 5, 6 ։
ե Ել. իզ. 31, 33 ։ խ. 3, 21 ։ Գղ. զ. 19 ։
զ Ել. իե. 10 ։ իզ. 33 ։ խ. 3, 21 ։
է Ել. ժզ. 33, 34 ։
ը Թու. ժէ. 10 ։
թ Ել. իե. 16, 21 ։ Լդ. 29 ։ խ. 20 ։ Բ Օր. ժ. 2, 5 ։ գ Թագ. ը. 9, 21 ։ Բ Մն. ե. 10 ։
ժ Ել. իե. 18, 22 ։ Ղև. ժզ. 2 ։ դ Թագ. ը. 6, 7 ։
ժա Թու. իը. 3 ։ Դան. ը. 11 ։
ժբ Ել. լ. 10 ։ Ղև. ժզ. 2, 11, 12, 15, 34 ։ Հմր 25 ։
ժգ Գղ. ե. 3 ։ է. 27 ։
ժդ Գղ. ժ. 19, 20 ։
ժե Յօհ. ժդ. 6 ։
ժզ Գաղ. գ. 21 ։ Գղ. է. 18, 19 ։ ժ. 1, 11 ։
ժէ Ղև. ժա. 2 ։ Կող. բ. 16 ։
ժը Թու. ժթ. 7. ետ ։
ժթ Եփե. բ. 15 ։ Կող. բ. 20 ։ Գղ. է. 16 ։
ի Գղ. ժ. 1 ։
իա Գղ. գ. 1 ։
իբ Գղ. ը. 2 ։
իգ Գղ. ժ. 4 ։
իդ Գոր. ի. 28 ։ Եփե. ա. 7 ։ Կող. ա. 14 ։ Ա Պետ. ա. 19 ։ Յայտ. ա. 5 ։ ե. 9 ։
իե Զաք. գ. 9 ։ Հմր 26, 28 ։ Գղ. ժ. 10 ։
իզ Դան. թ. 24 ։

իէ Ղև. ժզ. 14, 16 ։ իը Թու. ժթ. 2, 17, ետ ։ իթ Ա Պետ. ա. 19 ։ Ա Յօհ. ա. 7 ։ Յայտ. ա. 5 ։ լ Հռով. ա. 4 ։ Ա Պետ. գ. 18 ։ լա Եփե. բ. 5 ։ Տիտ. բ. 14 ։ Գղ. է. 27 ։

Յամի Տեառն 64

ըԳլ. ա. 3։ Ժ. 22։
ռԳլ. Զ. 1։
ՏՂու. ա. 74։ Հռով. Զ. 13, 22։ ա Պետ. դ. 2։
ւա Տիմ. բ. 5։
օԳլ. Է. 22։ Ը. 6։ Ժբ. 24։
ՖՀռով. գ. 25։ Ե. 6։ ա Պետ. գ. 18։
ռԳլ. Կ. 1։
ԲԳաղ. գ. 15։
ՔԵլ. Իդ. 6։ Ը։
ՊԵլ. Իդ. 5։ 6, 8։ Ղև. ԺԶ. 14, 15, 18։
ԽՂև. Ժդ. 4, 6, 7, 49, 51, 52։
ՂԵլ. Իդ. 8։ Մատ. ԻԶ. 28։
ԽԵլ. ԻԹ. 12, 36։ Ղև. Ը. 15, 19։ ԺԶ. 14, 15, 16, 18, 19։
ԸՂև. ԺԷ. 11։
ՐԳլ. Ը. 5։
ԺԳլ. Զ. 20։
ԻԳլ. Ը. 2։
ԼՀռով. Ը. 34։ Գլ. Է. 25։ ա Յով. Բ. 1։
ԽՀմր 7։
ԾՀմր 12։ Գլ. Է. 27։ Ժ. 10։ ա Պետ. գ. 18։
ԿաԿոր. Ժ. 11։ Գաղ. Դ. 4։ Եփե. ա. 10։
ՀԾն. Գ. 19։ Ժող. Գ. 20։
ՁըԿոր. Ե. 10։ Յայտ. Ի. 12, 13։
ՂՀռով. Զ. 10։ ա Պետ. գ. 18։
ՃՄատ. ԻԶ. 28։ Հռով. Ե. 15։
Մա Պետ. բ. 24։ ա Յով. գ. 5։
ՅՏիտ. Բ. 13։ բ Պետ. գ. 12։

ապիտի սրբէ ձեր խղճմտանքը
ռմեռած գործքերէն՝ Տկենդանի
Աստուածը պաշտելու ։
15 Եւ Քասոր համար ինքը օՆոր ուխ-
տին միջնորդն է, որ Ֆեր մահը առջի
ուխտին ժամանակը գործուած յան-
ցանքներուն քաւութեանը համար
եղած ըլլալով, ռհրաւիրուածները
յաւիտենական ժառանգութեան
16 խոստմունքը առնեն ։ Քանզի ուր
որ կտակ մը ըլլայ, հարկ է որ
կտակը ընողին մահը մէջ մտնէ ։
17 Ինչու որ Բկտակը մեռնելէն ետև
հաստատ կ'ըլլայ ։ քանզի բնաւ
վաւերականութիւն չունենար,
18 քանի որ կտակը ընողը ողջ է ։ ՔԱ-
նոր համար առջի ուխտն ալ առանց
19 արիւնի չէր հաստատուեր ։ Վասն
զի երբոր Մովսէս օրէնքին ամէն
պատուէրները բոլոր ժողովուրդին
պատմեց, Պցուլերուն ու նոխազնե-
րուն արիւնը առնելով՝ Խջուրով ու
կարմիր բուրդով և զոպայով բուն
գիրքին և բոլոր ժողովուրդին վրայ
20 սրսկեց ։ Եւ ըսաւ ։ ՂԱսիկայ է ան
ուխտին արիւնը, որ Աստուած ձե-
21 զի պատուիրեց ։ Եւ Խխորանին
վրայ, ու պաշտօնին բոլոր գործիք-
ներուն վրայ նոյնպէս սրսկեց արիւ-
22 նը ։ Եւ գրեթէ ամէն բան ա-
րիւնով կը մաքրուի օրէնքին նայե-
լով, ու Ըարիւն չթափուած թո-
ղութիւն չըլլար ։
23 Ուստի հարկ էր որ Րերկնաւոր
բաներուն օրինակները ասոնցմով
մաքրուին ։ բայց բուն երկնաւոր-
ները ասոնցմէ աւելի աղէկ զոհե-
24 րով ։ Քանզի ԺՔրիստոս չէ թէ
ձեռագործ սրբարանը մտաւ, որ
ԻՃշմարիտին օրինակն է, հապա
բուն երկինքը՝ որ հիմա մեզի հա-
մար ԼԱստուծոյ առջևը ներկայա-
25 նայ ։ Չէ թէ որ շատ անգամ
իր անձը պատարագ մատուցանէ,
ինչպէս Խքահանայապետը՝ որ ա-
մէն տարի սրբարանը կը մտնէ
26 իրը չեղած արիւնով ։ Ապա թէ
ոչ՝ պէտք էր իրեն աշխարհի սկիզ-
բէն հետէ շատ անգամ չարչա-
րուիլ ։ բայց հիմա Ծմէկ անգամ
մը Կդարերուն վերջը իր անձին պա-
տարագովը յայտնուեցաւ՝ մեղքը
27 մէկդի ձգելու համար ։ Եւ ինչպէս
որ մարդոց Հսահմանուած է մէկ
անգամ մը մեռնիլ, ու Ձանկէ
28 ետքը դատաստան ։ Անանկ ալ
ՂՔրիստոս մէկ անգամ մը Ճպատա-
րագ մատուցուեցաւ՝ Մշատերուն
մեղքերը վերցնելու համար, բայց
երկրորդ անգամին առանց մեղքի
պիտի յայտնուի փրկութեան հա-
մար անոնց՝ Յորոնք անոր կը սպա-
սեն ։

ԳԼ. Ժ

1 Օրէնքի զոհերուն տկարութիւնը ։ 10 Քրիստոսի մարմինին մէկ անգամ պատարագուիլը՝ 14 մշտնջենաւորապէս սրբեց մեղքերը ։ 19 Առաքեալը կը յորդորէ որ հաւատքը ամուր բռնեն համբերութեամբ և շնորհակալութեամբ ։

1 Վասնզի օրէնքը ռգալու բարիք-
ներուն Բշուքը, ու չէ թէ ան
բաներուն բուն կերպարանքը ու-
նենալով ։ միշտ ամէն տարի մա-
տուցուած նոյն զոհերով Քերբէք
չկրնար Պկատարեալ ընել անոնք
2 որ կը մօտենան ։ Ապա թէ ոչ՝
պիտի չդադարէի՞ն մատուցուելէն,
պաշտօն մատուցանողները մէկ
անգամ մաքրուելէն ետև՝ ալ մեղ-
քի վրայով խղճմտանքի յանդի-
մանութիւն մը չունենալնուն հա-
3 մար ։ Խբայց անոնցմով ամէն տա-
րի մեղաց յիշատակութիւն կ'ըլ-
4 լայ ։ Ինչու որ Ղնոխազներուն ու
ցուլերուն արիւնը չկրնար մեղքերը
5 վերցնել ։ Անոր համար իր աշ-
խարհ մտնելու ատենը՝ կ'ըսէ ։
Խզոհ ու ընծայ չուզեցիր դուն ։
հապա ինծի մարմին մը պատրաս-
6 տեցիր ։ Ողջակէզներու ու մեղքի
7 պատարագներու չհաւնեցար ։ Ան
ատենը ըսի ։ Ահա կու գամ ես,
(գիրքի տոմսի մէջ ինծի համար
գրուած է,) քու կամքդ ընելու
8 ով Աստուած ։ Վերը ըսելով թէ՝
Զոհ ու ընծայ և ողջակէզներ ու
մեղքի պատարագներ չուզեցիր՝ ու
անոնց չհաւնեցար, (որոնք օրէն-
քին համեմատ կը մատուցուին,)
9 Ետքը կ'ըսէ ։ Ահա կու գամ ես
քու կամքդ ընելու՝ ով Աստուած ։
առջինը կը հերքէ, որ երկրորդը
10 հաստատէ ։ ԸՈր ան կամքովը մենք
ալ սրբուեցանք՝ ՐՅիսուս Քրիս-
տոսի մարմինին մէկ անգամ պա-
տարագուելովը ։
11 Եւ ամէն քահանայ Ժօր ըստ օրէ
իր պաշտօնին մէջ կը կենայ, և
նոյն զոհերը շատ անգամ կը մա-
տուցանէ, Իորոնք երբէք չեն կըր-
12 նար մեղքերը վերցնել ։ Լբայց
ասիկայ մէկ զոհ մը մատուցանելով
մեղքերու համար, մշտնջենաւորա-
պէս Աստուծոյ աջ կողմը նստաւ ։
13 Եւ ասկէ ետև կը սպասէ՝ Խմինչև
որ իր թշնամիները իր ոտքերուն
14 պատուանդան դրուին ։ Ինչու որ
մէկ պատարագով մը մշտնջենաւո-
րապէս Ծկատարեց սրբուածները ։
15 Բայց Հոգին Սուրբ ալ մեզի վը-
կայութիւն կու տայ ։ քանզի ա-
16 ռաջուց ըսելէն ետև, թէ ԿԱս է
ան ուխտը՝ որ ես անոնց հետ պի-
տի ընեմ ան օրերէն ետքը, (կ'ըսէ
Տէրը,) իմ օրէնքներս անոնց սըր-
տին մէջը պիտի դնեմ, ու ա-

Յամի Տեառն 64

ռԳլ. Թ. 11։
ԲԿող. Բ. 17։ Գլ. Ը. 5։ Թ. 23։
ՔԳլ. Թ. 9։
ՊՀմր 14։
ԽՂև. ԺԶ. 21։ Գլ. Թ. 7։
ՂՄիք. Զ. 6, 7։ Գլ. Թ. 13։ Հմր 11։
ԽՍաղ. Խ. 6, Ը։ Ծ. 8, Ը։ Ես. ա. 11։ Երեմ. Զ. 20։ Ամով. Ե. 21, 22։
ԸՅոհ. ԺԷ. 19։ Գլ. ԺԳ. 12։
ՐԳլ. Թ. 12։
ԺԹուղ. Իը. 3։ Գլ. Է. 27։
ԻՀմր 4։
ԼԳլ. ա. 3։ Կող. գ. 1։
ԽՍաղ. ԾԺ. 1։ Գործ. Ը. 35։ ա Կոր. ԺԵ. 25։ Գլ. ա. 13։
ԾՀմր 1։
ԿԵրեմ. Լա. 33, 34։ Գլ. Ը. 10, 12։

Յամ Տեառն 64

գ Հռով. ե. 2 ։ Եփե. բ. 18 ։ գ. 12 ։
դ Գղ. թ. 8 ։ 12 ։
ե Յօհ. ժ. 9 ։ ժգ. 6 ։ Գղ. թ. 8 ։
զ Գղ. ժ. 3 ։
է Գղ. դ. 14 ։
ը ա Տիմ. գ. 15 ։
թ Գղ. դ. 16 ։
ժ Եփե. գ. 12 ։ Յակ. ա. 6 ։
ի Գղ. թ. 15 ։
լ Եզեկ. լզ. 25 ։
խ Գղ. դ. 14 ։
ծ ա Կոր. ա. 9 ։ ժ. 13 ։ ա Թես. ե. 24 ։
կ բ Թես. գ. 3 ։ Գղ. ժա. 11 ։
հ Գոր. բ. 42 ։ Յուդ. 19 ։
ձ Հռով. ժգ. 11 ։
ղ Փիլ. դ. 5 ։ բ Պետ. գ. 9. 11. 14 ։
ճ բ Պետ. բ. 20. 21 ։
մ Թուո. ժե. 30 ։ Գղ. զ. 4 ։
յ Եզեկ. լզ. 5 ։ Սոփ. ա. 18 ։ գ. 8 ։ բ Թես. ա. 8 ։ Գղ. ժբ. 29 ։
ն Գղ. բ. 2 ։
շ բ Օր. ժէ. 2. 6 ։ ժթ. 15 ։ Մատ. ժը. 16 ։ Յօհ. ը. 17 ։ բ Կոր. ժգ. 1 ։
ո Գղ. բ. 3 ։ ժբ. 25 ։
չ ա Կոր. ժա. 29 ։ Գղ. ժգ. 20 ։
պ Մատ. ժբ. 31. 32 ։ Եփե. դ. 30 ։
ջ բ Օր. լբ. 35 ։ Հռով. ժբ. 19 ։
ռ բ Օր. լբ. 36 ։ Սաղ. ծ. 4 ։ 14 ։
ս Ղու. ժբ. 5 ։
վ Գաղ. գ. 4 ։ բ Յօհ. 8 ։
տ Գղ. զ. 4 ։
ր Փիլ. ա. 29. 30 ։ Կող. բ. 1 ։
ց ա Կոր. դ. 9 ։ Փիլ. ա. 7 ։ դ. 14 ։ ա Թես. բ. 14 ։ ւ Փիլ. ա. 7 ։ բ Տիմ. ա. 16 ։ փ Մատ. ե. 12 ։ Գոր. ե. 41 ։ Յակ. ա. 2 ։

նոնց միտքին մէջը պիտի գրեմ
17 զանոնք. Ետքը կ'ըսէ թէ, Անոնց
մեղքերը և անոնց անօրէնութիւն-
18 ները ալ պիտի չյիշեմ ։ Իսկ ուր
որ ասոնց թողութիւն կայ, ալ
մեղքի համար պատարագ պէտք չէ ։
19 Ուրեմն եղբայրներ՝ համարձա-
կութիւն ունենալով Սուրբ տեղը
20 մտնելու Յիսուսի արիւնովը, Այն
նոր ու կենդանի ճամբովը՝ որ բա-
ցաւ մեզի վարագոյրին միջէն՝ որ
21 է իր մարմինը, Եւ մեծ քահանայ
մը ունենալով Աստուծոյ տանը
22 վրայ, Մօտենանք ճշմարիտ սըր-
տով՝ լեցուն հաւատքով. սրտեր-
նիս չար խղճէն մաքրուած, ու
մարմիննիս մաքուր ջուրով լուա-
23 ցուած. Անխախտ պահենք յոյ-
սին դաւանութիւնը. ինչու որ
հաւատարիմ է անիկայ՝ որ խոս-
24 տացաւ ։ Եւ իրարու հոգ տանինք՝
սիրոյ և բարեգործութեան գրգռե-
25 լով. Եւ միատեղ ժողովուիլը չը-
թողունք, ինչպէս ոմանք սովորու-
թիւն ունին. հապա մէկզմէկ յոր-
դորենք, ու այնչափ աւելի՝ որչափ
որ այն օրուան մօտենալը կը տես-
նէք ։
26 Վասն զի թէ որ ճշմարտու-
թեան գիտութիւնը ընդունելէն
ետև՝ կամաւ մեղք գործելու ըլ-
լանք, ալ անկէ ետև մեղքերու
27 համար ուրիշ զոհ մը չմնար. Հա-
պա մէկ զարհուրելի սպասել մը
դատաստանին, ու կրակի բար-
կութիւն մը կը մնայ, որ պիտի լա-
28 փէ հակառակորդները ։ Մէկը թէ
որ Մովսէսին օրէնքը անարգէր,
առանց ողորմութեան երկու
կամ իրեք վկաներով կը մեռնէր.
29 Ալ որչափ սաստիկ պատժոյ ար-
ժանի պիտի սեպուի անիկայ, որ
Աստուծոյ Որդին ոտքի տակ ա-
ռաւ, և ուխտին արիւնը անմաքուր
սեպեց, որ անով ինքը սրբուեցաւ,
և շնորհաց Հոգին նախատեց ։
30 Քանզի գիտենք անիկայ որ ըսաւ.
Իմս է վրէժխնդրութիւնը, ես
պիտի հատուցանեմ՝ կ'ըսէ Տէրը.
և դարձեալ՝ Տէրը պիտի դատէ իր
31 ժողովուրդը ։ Սարսափելի բան է
կենդանի Աստուծոյ ձեռքը իյնալը ։
32 Արդ միտքերնիդ բերէք ան առա-
ջի օրերը՝ որ լուսաւորուելէն ետև
շատ չարչարանքներու նեղութիւն
33 կրեցիք. Երբեմն նախատինքներով
ու վիշտերով խայտառակուած,
երբեմն ալ ասանկ վիճակի մէջ ե-
34 ղողներուն ընկերդ ըլլալով ։ Ինչու
որ կապուածներուն հետը չարչա-
րուեցաք, ու ձեր ստացուածքին
կողոպտուիլը ուրախութեամբ ըն-
դունեցիք, գիտնալով որ յաւա-
գոյն և մնայուն ստացուածքներ
35 ունիք ձեզի երկինքը ։ Ուստի ձեզ-
մէ մի ձգէք ձեր վստահութիւնը,
որ ան մեծ վարձքի հատուցում
36 ունի ։ Ինչու որ պէտք է ձեզի
համբերութիւն, որ Աստուծոյ
կամքը ընելով՝ խոստումները վայե-
37 լէք. Քանզի նաև քիչ մը ա-
տենէն ան որ գալու է, պիտի
38 գայ, ու պիտի չուշանայ ։ Եւ
Արդարը հաւատքէն պիտի ապրի.
ու թէ որ մէկը ետ քաշուի, իմ
39 հոգիս անոր չհաճիր ։ Բայց մենք
ետ չենք քաշուիր որ կորսուինք.
հապա կը հաւատանք որ մեր հո-
գին փրկուի ։

## ԳԼ. ԺԱ

1 Հաւատքը ի՛նչ է ։ 6 Առանց հաւատքի չենք կրնար Աստուծոյ հաճելի ըլլալ ։ 7 Հաւատքին արդիւնաւոր պտուղները որ հին ատենը նահապետներուն վրայ երևցան ։

1 Արդ՝ հաւատքը յուսացուած բա-
ներուն հաստատութիւնը՝ ու
չերևցած բաներուն ապացոյցն է.
2 Վասն զի անով առջինները վկա-
յութիւն ընդունեցին ։
3 Հաւատքով կ'իմանանք թէ աշ-
խարհքը Աստուծոյ խօսքովը հաս-
տատուեցաւ, ու աներևոյթ բա-
ներէն այս երևցածները եղան ։
4 Հաւատքով Աբէլը Կայենէն ա-
ւելի աղէկ զոհ մատուց Աստուծոյ.
որ անով վկայուեցաւ արդար ըլ-
լալը. ինչու որ իր պատարագնե-
րուն վրայ Աստուծմէ վկայութիւն
եղաւ իրեն. և անով թէպէտ մե-
ռաւ, դեռ տակաւին կը խօսի ։
5 Հաւատքով Ենովք երկրէս փո-
խադրուեցաւ, որ մահ չտեսնէ.
ու մէկ տեղ մը չէր գտնուեր, ինչու
որ Աստուած փոխադրեց անիկայ.
քանզի անոր փոխադրուելէն առաջ՝
վկայուեցաւ թէ Աստուծոյ հաճելի
6 էր ։ Բայց առանց հաւատքի ան-
կար է Աստուծոյ հաճոյ ըլլալ.
վասն զի ան որ Աստուծոյ կը մօ-
տենայ, պէտք է որ հաւատայ՝ թէ
Աստուած կայ, և թէ վարձահա-
տոյց կ'ըլլայ անոնց՝ որ զինքը կը
փնտռեն ։
7 Հաւատքով Նոյ պատգամ առ-
նելով Աստուծմէ՝ դեռ չերևցած
բաներուն համար, վախնալով
տապանը շինեց՝ իր տունը փրկելու
համար, որով աշխարհս դատա-
պարտեց, և ժառանգաւոր եղաւ
ան արդարութեանը՝ որ հաւատ-
քով կ'ըլլայ ։
8 Հաւատքով Աբրահամ երբոր
կանչուեցաւ՝ մտիկ ըրաւ ան տեղը
ելլելու, որն որ ժառանգութիւն

Յամ Տեառն 64

ք Մատ. զ. 20 ։ ժթ. 21 ։ Ղու. ժբ. 33 ։ ա Տիմ. զ. 19 ։
և Մատ. ե. 12 ։ ժ. 32 ։
օ Ղու. խա. 19 ։ Գաղ. զ. 9 ։ Գղ. ժբ. 1 ։
ֆ Կող. գ. 24 ։ Գղ. թ. 15 ։ ա Պետ. ա. 9 ։
ա Ղու. ժը. 8 ։ բ Պետ. գ. 9 ։
բ Ամբ. բ. 3. 4 ։
գ Հռով. ա. 17 ։ Գաղ. գ. 11 ։
դ բ Պետ. բ. 20. 21 ։
ե Գոր. ժզ. 30. 31 ։ ա Թես. ե. 9 ։ բ Թես. բ. 13 ։

ա Հռով. բ. 24. 25 ։ բ Կոր. դ. 18 ։ ե. 7 ։
բ Հմր 39 ։
գ Ծն. ա. 1 ։ Սաղ. լգ. 6 ։ Յօհ. ա. 3 ։ Գղ. ա. 2 ։ բ Պետ. գ. 5 ։
դ Ծն. դ. 4 ։ ա Յօհ. գ. 12 ։
ե Ծն. դ. 10 ։ Մատ. իգ. 35 ։ Գղ. ժբ. 24 ։
զ Ծն. ե. 22. 24 ։
է Ծն. զ. 13. 22 ։
ը ա Պետ. գ. 20 ։
թ Հռով. դ. 22 ։ դ. 13 ։ Փիլ. գ. 9 ։
ժ Ծն. ժբ. 1. 4 ։ Գոր. է. 2. 3. 4 ։

Յամի Տեառն 64

ի Ծն. ժբ. 8. ժգ. 3, 18. ժը. 1, 9. լ Գլ. զ. 17. խ Գլ. ժբ. 22. ժգ. 14. ծ Գլ. գ. 4. Յայտ. իա. 2, 10. կ Ծն. ժէ. 19. ժը. 11, 14. իա. 2. հ Ղուկ. ա. 36. ձ Հռով. դ. 21. Գլ. ժ. 23. ղ Հռով. դ. 19. ճ Ծն. իբ. 17. Հռով. դ. 18. մ Հմր 39. ն Հմր 27. Յովհ. ը. 56. շ Ծն. իգ. 4. խէ. 9. ա Մն. իթ. 15. Սաղ. լթ. 12. ճժթ. 19. ա Պետ. ա. 17. բ. 11. ո Գլ. ժգ. 14. պ Ել. գ. 6, 15. Մատ. իբ. 32. Գործ. է. 32. ջ Փիլ. գ. 20. Գլ. ժգ. 14. ռ Ծն. իբ. 1, 9. Յակ. բ. 21. ս Ծն. իա. 12. Հռով. թ. 7. վ Հռով. դ. 17, 19, 21. տ Ծն. իէ. 27, 39. ր Ծն. խը. 5, 16, 20. ց Ծն. խէ. 31. ւ Ծն. ծ. 24, 25. Ել. ժգ. 19. փ Ել. բ. 2. Գործ. է. 20.

պիտի առնէր . և ելաւ գնաց , ու
չէր գիտեր թէ ուր կ'երթայ ։
9 Հաւատքով պանդխտացաւ աւե-
տեաց երկրին մէջ՝ որպէս թէ օտա-
րութեան մէջ , և վրաններու մէջ
բնակեցաւ Իսահակին ու Յակոբին
հետ միասին , որոնք իր հետը ժա-
ռանգորդ էին նոյն խոստմունքին .
10 Ինչու որ ինքը կը սպասէր այն հի-
մերով հաստատուած քաղաքին ,
որուն ճարտարապետը ու արարի-
չը Աստուած է ։
11 Հաւատքով ինքը Սառան ալ
որդեծնութեան սերմը առնելու զօ-
րութիւն ընդունեց և ատենը
անցած հասակի մէջ զաւակ ծնաւ .
ինչու որ Հաւատարիմ սեպեց զա-
նիկայ՝ որ խոստմունքը ըրեր էր ։
12 Ուստի այն մէկէն ծնան , (այն ալ
մեռածի պէս ,) շատութեան կողմ
երկինքի աստղերուն պէս , ու
ծովեզերքը եղած աւազին պէս ա-
ռանց համրանքի ։
13 Ասոնք ամէնն ալ հաւատքով մե-
ռան՝ խոստմունքները չառած
հապա հեռուէն տեսան զանոնք
ու ուրախացան , և խոստովանեցան
թէ իրենք օտարներ ու պանդուխտ-
14 ներ են երկրի վրայ ։ Քանզի անոնք
որ ասանկ բաներ կը խօսին , յայտ-
նի կ'ընեն թէ մէկ գաւառ մը կը
15 փնտռեն ։ Եւ յիրաւի թէ որ ա-
նիկայ յիշէին՝ ուսկից որ ելան ,
ժամանակ ունէին հոն դառնալու ։
16 Բայց հիմա լաւագոյն գաւառ մը
կը փափաքին , այսինքն երկնաւո-
րին . ուստի ամօթ չսեպեր Աս-
տուած՝ անոնց Աստուածը ըսուի-
լը . ինչու որ անոնց քաղաք
մը պատրաստեց ։
17 Հաւատքով Աբրահամ իր փոր-
ձուած ատենը Իսահակը պատարագ
մատոյց . և ան որ խոստմունքները
առած էր , իր միակ հատիկ որդին կը
18 մատուցանէր . Որուն ըսուեցաւ թէ
Իսահակով քեզի սերունդ պիտի
19 կոչուի . Քանզի կը մտածէր , թէ
Աստուած մեռելներէն ալ կարող է
յարուցանել . ուսկից օրինակով
մը ընդունեց զանիկայ ։
20 Հաւատքով Իսահակ գալու բա-
ներուն համար մարգարէանալով՝ օրհ-
21 նեց Յակոբը ու Եսաւը ։ Հա-
ւատքով Յակոբ իր մեռնելու ատե-
նը՝ Յովսէփին որդիներէն ամէն
մէկը օրհնեց , ու երկրպագութիւն
ըրաւ իր գաւազանին գլխուն վրայ ։
22 Հաւատքով Յովսէփ իր վախճա-
նելու ատենը յիշեցուց Իսրայէլի
որդւոցը Եգիպտոսէն ելլելը , ու
իր ոսկորներուն համար պատուէր
տուաւ ։
23 Հաւատքով՝ երբոր ծնաւ Մով-

սէս , իր ծնողքներուն ձեռքովը իրեք
ամիս գաղտուկ պահուեցաւ . ինչու
որ տղան գեղեցիկ տեսան , ու չվախ-
ցան թագաւորին հրամանէն ։
24 Հաւատքով Մովսէս երբոր մեծ-
ցաւ , չընդունեց Փարաւոնի աղջ-
25 կանը որդի ըսուիլը ։ Քանզի աւե-
լի աղէկ սեպեց Աստուծոյ ժողո-
վուրդին հետ չարչարուիլ , քան թէ
մեղաց ժամանակաւոր զուարճու-
26 թիւնը վայելել . Եւ աւելի մեծ
հարստութիւն սեպեց Քրիստոսի
նախատինքը , քան թէ Եգիպտոսի
գանձերը . ինչու որ դիտելով կը
սպասէր վարձքի հատուցմանը ։
27 Հաւատքով Եգիպտոսը թողուց ,
ու չվախցաւ թագաւորին բարկու-
թենէն . ինչու որ համբերեց՝ որ-
պէս թէ Անտեսանելին կը տեսնէր ։
28 Հաւատքով ըրաւ զատիկը և ա-
րիւն սրսկելը , որ անդրանիկները
սատկեցնողը իրենց չդպչի ։
29 Հաւատքով Կարմիր ծովէն ան-
ցան՝ որպէս թէ ցամաքէ . որուն
փորձը ընելով Եգիպտացիները ըն-
կղմեցան ։
30 Հաւատքով Երիքովի պարիսպ-
ները ինկան՝ եօթը օր անոնց բոլոր-
տիքը պտըտելով ։
31 Հաւատքով Ռախաբ պոռնիկը
անհաւատներուն հետ չկորսուե-
ցաւ , երբոր լրտեսները խաղաղու-
թեամբ ընդուներ էր ։
32 Եւ ալ ի՞նչ ըսեմ . ինչու որ
ժամանակը բաւական չէ որ պատ-
մեմ Գեդէոնին՝ ու Բարակին՝ և
Սամփսոնին՝ ու Յեփթայէին՝ և
Դաւիթին՝ ու Սամուէլին և ու-
33 րիշ մարգարէներուն համար . Որոնք
հաւատքով թագաւորութիւննե-
րու յաղթեցին , արդարութիւն
գործեցին , խոստմունքներու հա-
սան , առիւծներու բերաններ գո-
34 ցեցին , Կրակի զօրութիւն մարե-
ցին , սուրի բերնէ ազատեցան ,
տկարութենէ ուժովցան , պատե-
րազմի մէջ զօրաւոր եղան , օտար-
35 ներու բանակներ ցրուեցին , Կնիկ-
ներ իրենց մեռելները ընդունեցին
յարութիւն առած . ոմանք չար-
չարուեցան՝ և չընդունեցին ազա-
տութիւնը , որ լաւագոյն յարու-
36 թեան հասնին . Ուրիշներ ալ նա-
խատինքներու ու ծեծերու , նաև
կապերու ու բանտերու փորձը
37 առին . Քարկոծուեցան , սղո-
ցուեցան , փորձանքի մէջ ինկան ,
սրով սպաննուելով մեռան , ոչ-
խարի մորթերով ու այծի մոր-
թերով պտըտեցան , կարօտու-
թիւն քաշելով , նեղը իյնալով ,
38 չարչարուելով , ( Որ անոնց ար-
ժանի չէր աշխարհս , ) անա-

Յամի Տեառն 64

ք Ել. ա. 16, 22. օ Ել. բ. 10, 11. ա Սաղ. ձդ. 10. բ Գլ. ժգ. 13. գ Գլ. ժ. 35. դ Ել. ժ. 28, 29. ժբ. 37. ժգ. 17, 18. ե Հմր 13. զ Ել. ժբ. 21, եւ. է Ել. ժդ. 22, 29. ը Յես. զ. 20. թ Յես. զ. 23. Յակ. բ. 25. ժ Յես. բ. 1. ի Դատ. զ. 11. լ Դատ. դ. 6. խ Դատ. ժգ. 24. ծ Դատ. ժա. 1. ժբ. 7. կ ա Թագ. ժզ. 1, 13. ժէ. 45. հ ա Թագ. ա. 20. ժբ. 20. ձ բ Թագ. է. 11, եւ. ղ Դատ. ժդ. 5, 6. ա Թագ. ժէ. 34, 35. Դան. զ. 22. ճ Դան. գ. 25. մ ա Թագ. ի. 1. դ Թագ. ժթ. 3. դ Թագ. զ. 16. յ դ Թագ. ի. 7, եւ. Յոբ. խբ. 10. Սաղ. զ. 8. ն Դատ. ժե. 8, 15. ա Թագ. ժդ. 13, եւ. ժէ. 51, 52. բ Թագ. ը. 1, եւ. շ գ Թագ. ժէ. 22. դ Թագ. դ. 35. ո Գործ. իբ. 25. չ Ծն. լթ. 20. Երեմ. ի. 2. լէ. 15. պ գ Թագ. իա. 13. բ Մն. իդ. 21. Գործ. է. 58. ժդ. 18. ջ դ Թագ. ա. 8. Մատ. գ. 4. ռ Զաք. ժգ. 4.

Ցամ. Տեառն Իրր 60

բայց խոնարհներուն շնորհք կու
6 տայ ։ Ուրեմն Աստուծոյ հզօր
ձեռքին տակը խոնարհեցէք, որ
ձեզ ժամանակին բարձրացընէ ։
7 Ձեր ամէն հոգը անոր ձգեցէք,
վասն զի անիկայ ձեզի համար կը
հոգայ ։
8 Արթուն կեցէք, հսկեցէք,
վասն զի ձեր հակառակորդը Սա-
տանան մռնչող առիւծի պէս կը
պտրտի, ու կը փնտռէ թէ ով
9 կլլէ ։ Որուն դէմ կեցէք հա-
ւատքով հաստատուած. գիտնա-
լով որ ձեր եղբայրներն ալ աշ-
խարհի մէջ նոյն չարչարանքները
կը քաշեն ։
10 Եւ բոլոր շնորհաց Աստուածը՝ որ
մեզ իր յաւիտենական փառքին
կանչեց Քրիստոս Յիսուսի ձեռքո-
վը՝ քիչ մը ատեն նեղութիւն կը-
րելնէդ ետքը, ինքը ձեզ կատա-
րեալ ընէ, հաստատէ, զօրացընէ
11 ու հիմնէ ։ Իրեն փառք և զօ-
րութիւն՝ յաւիտեանս յաւիտե-
նից. ամէն ։
12 Սիղուանոս հաւատարիմ եղբօ-
րը ձեռքովը՝ (ինչպէս ես կը կար-
ծեմ,) համառօտ մը ձեզի գրեցի,
յորդորելով ու վկայելով, թէ
աս է Աստուծոյ ճշմարիտ շնորհ-
քը, որուն մէջը հաստատ կեցեր
13 էք ։ Բարև կ'ընէ ձեզի Բաբելոնի
մէջ եղած եկեղեցին՝ որ ձեզի հետ
ընտրուած է, ու իմ որդիս Մար-
14 կոսն ալ ։ Բարև տուէք իրարու
սիրոյ համբուրով. խաղաղու-
թիւն ձեր ամենուն հետ՝ որ Քրիս-
տոս Յիսուսի մէջ էք. ամէն ։

---

ԵՐԿՐՈՐԴ ԸՆԴՀԱՆՐԱԿԱՆ ԹՈՒՂԹ

# ՊԵՏՐՈՍԻ ԱՌԱՔԵԼՈՅՆ

Ցամ. Տեառն 66

## ԳԼՈՒԽ Ա

1 Առաքեալը հաստատ լով քրիստոնեաները Աստուծոյ շնորհացը մէջ աճելու յուսով. 5 կը յորդորէ զանոնք որ հաւատքով ու բարի գործքով իրենց կոչումը հաստատ պահեն, 12 որն որ ինքը հոգ կը տանի անոնց միտքը ձգելու ; գիտնալով որ իր մահը մօտ է ։ 16 Կը խրատէ որ հաստատ ըլլան Քրիստոսի հաւատքին մէջ. ցուցընելով թէ անիկայ է Աստուծոյ ճշմարիտ Որդին ։ որովհետև առաքեալները անոր վեհափառութեանը ականատես եղան. և Հայրը ու մարգարէներն ալ անոր համար վկայեցին.

1 Շմաւոն Պետրոս՝ Յիսուս Քրիս-
տոսի ծառայ և առաքեալ. ձե-
զի՝ որ մեր հետը նոյն պատուա-
կան հաւատքին հասաք մեր Աս-
տուծոյն ու Փրկչին Յիսուս Քրիս-
2 տոսին արդարութիւնովը. Շը-
նորհք և խաղաղութիւն ձեր վրայ
աւելնայ՝ Աստուծոյ ու մեր Տէրոջը
Յիսուսին գիտութիւնովը.
3 Ինչպէս որ իր աստուածային զօ-
րութիւնը կենաց և աստուածպաշ-
տութեան վերաբերեալ ամէն բա-
ները մեզի տուաւ անոր գիտու-
թիւնովը՝ որ մեզ փառքով ու
առաքինութիւնով հրաւիրեց.
4 Որոնցմով ամենամեծ ու պա-
տուական խոստմունքներ տրուած
են մեզի, որպէս զի ասոնցմով
աստուածային բնութեանը հաղորդ
ըլլաք՝ աշխարհի մէջ ցանկութե-
նէ յառաջ եկած ապականութե-
5 նէն փախչելով ։ Եւ աս բանիս
համար բոլոր ջանքերնիդ դրած՝
ձեր հաւատքին վրայ առաքինու-
թիւն աւելցուցէք, ու առաքի-
6 նութեանը վրայ՝ գիտութիւն, Եւ
գիտութեանը վրայ՝ ժուժկալու-
թիւն, ու ժուժկալութեանը վը-
րայ՝ համբերութիւն, և համբերու-
թեանը վրայ՝ աստուածպաշտու-
7 թիւն, Ու աստուածպաշտութեա-
նը վրայ՝ եղբայրսիրութիւն, Ու
եղբայրսիրութեանը վրայ՝ սէր ։
8 Վասն զի քանի որ աս բաները ձեր
վրայ կը գտնուին ու կ'աճին, ծոյ-
լ ու անպտուղ չեն ըներ ձեզ
մեր Տէր Յիսուս Քրիստոսը ճանչ-
9 նալուն մէջ ։ Բայց որու քով որ
աս բաները չկայ, անիկայ կոյր է
ու կարճատես, որ մոռցեր է իր
10 առջի մեղքերէն մաքրուիլը ։ Անոր
համար՝ եղբայրներ՝ աւելի ջանք
ըրէք որ ձեր կոչումը ու ընտրու-
թիւնը հաստատէք. ինչու որ աս
ընելով՝ բնաւ պիտի չվրիպիք.
11 Քանզի այսպէս ձեզի առատօրէն
պիտի շնորհուի մեր Տէր ու Փրկիչ
Յիսուս Քրիստոսի յաւիտենական
թագաւորութիւնը մտնելը ։
12 Ուստի ես միշտ աս բաները միտ-
քերնիդ ձգելու վրայով զանցառու
պիտի չըլլամ. թէև գիտէք՝ և
հաստատուած էք ներկայ ճշմար-

Յամ. Տեառն 66

յ բ Կոր. ե. 1, 4։
* Յուն. վրանիս
ղ Գղ. գ. 1։
ճ Տես բ Օր. գ. 21, 22։ ա. 14։ բ Տիմ. դ. 6։
մ Յովհ. իա. 18, 19։
յ ա Կոր. ա. 17։ բ. 1. 4։ բ Կոր. բ. 17։ դ. 2։
ն Մատ. ժէ. 1, 2։ Մար. թ. 2։ Յով. ա. 14։ ա Յով. ա. 1։ դ. 14։
շ Մատ. գ. 17։ ժէ. 5։ Մար. ա. 11։ թ. 6։ Ղուկ. գ. 22։ թ. 35։
ո Տես Ել. գ. 5։ Յես. ե. 15։ Մատ. ժէ. 6։
չ Սաղ. ճժթ. 105։ Յով. ե. 35։
պ Յայտ. բ. 28։ իբ. 16։ Տես բ Կոր. դ. 4, 6։
ջ Հռով. ժբ. 6։
ռ բ Տիմ. գ. 16։ ա Պետ. ա. 11։
ս բ Թագ. իգ. 2։ Ղուկ. ա. 70։ Գործ. ա. 16։ գ. 18։

13 տուլթեանս վրայ ։ Եւ իրաւունք կը
սեպեմ , յԹէ քանի որ աս * մար-
մինիս մէջն եմ՝ ղմտքերնիդ ձգե-
14 լով ձեզ արթընցընեմ ։ ճՔանզի
գիտեմ որ ես շուտով աս իմ մար-
մինս պիտի մերկանամ , մինչպէս
որ մեր Տէր Յիսուս Քրիստոսը
15 յայտնեց ինծի ։ Ուստի պիտի ջա-
նամ որ իմ աշխարհէ ելլելէս ետքն
ալ միշտ կարող ըլլաք աս բաները
16 յիշելու ։ յԻնչու որ չէ թէ մենք
վարպետութեամբ շինուած առաս-
պելներու ետեւէ երթալով՝ մեր Տէր
Յիսուս Քրիստոսի զօրութիւնը ու
գալուստը ձեզի ցուցուցինք , նհա-
պա անոր մեծափառութեանը ա-
17 կանատես ըլլալով ։ Վասն զի ին-
քը Հօր Աստուծմէ փառք ու պա-
տիւ առաւ , ան մեծվայելչութեան
փառքէն անանկ ձայն մը գալով
թէ , շԱսիկա է իմ սիրելի Որ-
18 դիս , որուն հաւներ եմ ։ Եւ աս
երկինքէն եկած ձայնը մենք լսե-
ցինք , որ անոր հետն էինք սուրբ
19 լեռանը վրայ ։ Եւ մարգարեա-
կան խօսքն ալ ունինք՝ որ աւելի
հաստատուն է . ու աղէկ կ'ընէք՝
թէ որ անոր մտադրութիւն ընէք ,
չորպէս թէ մութ տեղը լոյս տուող
ճրագի մը , մինչև որ ցորեկը լուսա-
նայ պու արուսեակը սրտերնուդ
20 մէջը ծագի ։ Բայց առաջ աս գիտ-
նաք , ջոր գրոց ամէն մարգարէու-
թիւն իր յատուկ մեկնութիւնը
21 չունի ։ ռԻնչու որ մարգարէութիւն
մը երբեք մարդոց կամքին պէս
չտրուեցաւ . սհապա Աստուծոյ
սուրբ մարդիկը Սուրբ Հոգիէն շար-
ժուած՝ խօսեցան ։

## ԳԼ. Բ

1 Կը ծանուցանէ թէ սուտ վարդապետներ պիտի ելլեն , և կը նախաձայնէ՝ թէ՝ անոնց ու թէ անոնց հետեւողներուն անպարկեշտ վարմունքը ու պատիժը . 7 ուսկից ազատ պիտի մնան բարեպաշտները , ինչոր որ Ղովտ Սոդոմէն ազատեցաւ ։ 10 Աս անառակ և հայհոյիչ խաբեբաներուն վարմունքը աւելի մանրամասնաբար կը նկարագրէ , որպէս զի տեսնելով մարդիկ շուտով կարենան ճանչնալ զանոնք , և անոնցմէ հեռու կենալ ։

տ բ Օր. ժգ. 1։
ր Մատ. իդ. 11։ Գործ. ի. 30։ ա Կոր. ժա. 19։ ա Տիմ. դ. 1։ բ Տիմ. դ. 1, 5։ ա Յով. դ. 1։ Յուդ. 18։
ց ա Կոր. զ. 20։ Գաղ. գ. 13։ Եփե. ա. 7։ Եբր. թ. 29։ ա Պետ. ա. 18։ Յայտ. ե. 9։
ւ Յուդ. 4։
փ Փիլ. գ. 19։
ք Հռով. ժզ. 18։ բ Կոր. ժբ. 17, 18։ ա Տիմ. զ. 5։ Տիտ. ա. 11։

1 տԲայց սուտ մարգարէներ ալ
կ'ըլլային ժողովուրդին մէջ ,
րինչպէս որ ձեր մէջն ալ սուտ
վարդապետներ պիտի ըլլան , որ
դաղտուկ պիտի մտցընեն կորուսիչ
հերձուածողութիւններ , ցու զի-
րենք ծախու առնող Տէրը ուրա-
նալով՝ ւիրենց վրայ պիտի բերեն
2 արագահաս կորուստը . Եւ շատերը
անոնց անառակութեանցը ետեւէն
պիտի երթան , որոնց համար ճըշ-
մարտութեան ճամբան պիտի հայ-
3 հոյուի . փԵւ ագահութիւնով՝ խո-
րամանկութեամբ շինուած խօս-
քերով քձեզ վաճառաշահութեան
պիտի գործածեն . ըորոնց դատա-
պարտութիւնը շատոնցմէ պատրաստ
ըլլալով չուշանար , ու անոնց կո-
րուստը չմրափեր ։
4 Վասն զի թէ որ Աստուած թմեղք
գործող ժհրեշտակներուն չխնայեց ,
իհապա խաւարի կապերով տար-
տարոսը ձգած՝ դատաստանի պահել
5 տուաւ . Ու առջի աշխարհին ալ
չխնայեց . լմիայն թէ Նոյ ութե-
րորդ անձը՝ խարդարութեան քա-
րոզիչը պահեց , ծերբոր ջրհեղեղը
ամբարիշտներուն աշխարհին վրայ
6 բերաւ . կԵւ Սոդոմի ու Գոմորի
քաղաքները մոխիր դարձընելով ու
կործանելով դատապարտեց , հետ-
քէն ամբարշտութիւն ընելու մար-
7 դոց օրինակ ընելով զանոնք . ձԵւ
ազատեց արդար Ղովտը՝ որ անօ-
րէններուն անառակ վարմունքէն
8 ձանձրացեր էր . ( Ինչու որ ան ար-
դարը անոնց մէջը կենալով՝ ղաչ-
քովը տեսնելով ու ականջովը լսե-
լով , օրէ օր իր արդար հոգին կը
տանջէր անոնց անօրէն վարմուն-
9 քովը . ) ճՏէրը գիտէ բարեպաշտ-
ները փորձութենէ ազատելը , և
անիրաւները տանջանքի համար
դատաստանի օրուան պահելը ։
10 մՄանաւանդ անոնք որ պղծալից
ցանկութեամբ մարմինի ետեւէ կ'եր-
թան , և տէրութիւնը կ'անարգեն ,
յլիրբնահաւան ու յանդուգն են ,
չեն վախնար փառաւորներուն դէմ
11 հայհոյելու . նԵրբոր հրեշտակները՝
որ անոնցմէ շատ մեծ են զօրութիւ-
նով ու կարողութիւնով , Տէրոջը
առջեւը հայհոյութեամբ դատա-
պարտութիւն չեն բերեր անոնց
12 վրայ ։ շԲայց ասոնք անբան անա-
սուններու պէս՝ (որ բնականաբար
որսի ու ապականութեան համար
եղած են , ) չգիտցած բաներնուն
դէմ կը հայհոյեն , և իրենց ապա-
կանութիւնովը պիտի ապականին ,
13 ոԱնիրաւութեան վարձքը ընդու-
նելով . չոր ցորեկուան մէջ եղած
ղեղխութիւնը զուարճութիւն կը
սեպեն . պարատ ու բիծ են , իրենց
խաբէութիւններովը զուարճանա-
լով՝ ջձեզի հետ կերուխումի նստած
14 ատեննին . Շնութեամբ լեցուն
աչքեր ունին , որ մեղքէ չեն դադա-
րիր . անհաստատ հոգիները կը
խաբեն . ռագահութեան սովորած
սիրտեր ունին . անիծեալ զաւակ-
15 ներ են . Շիտակ ճամբան ձգելով
մոլորեցան , սԲէովրեան Բաղաա-
մին ճամբուն հետեւելով , որ անի-
16 րաւութեան վարձքը սիրեց . Բայց
իր անօրէնութեանը յանդիմանու-
թիւնը առաւ . անխօս էշը մարդ-

Յամ. Տեառն 66

ե բ Կոր. բ. 17։ Գղ. ա. 16։
ը բ Օր. լբ. 35։ Յուդ. 4, 15։
թ Յով. ը. 44։ ա Յով. գ. 8։
ժ Յոբ. դ. 18։ Յուդ. 6։
ի Ղուկ. ը. 31։ Յայտ. ի. 2, 3։
լ Ծն. է. 1։ է. 23։ Եբր. ժա. 7։ ա Պետ. գ. 20։
խ ա Պետ. գ. 19։
ծ Գղ. գ. 6։
կ Ծն. ժթ. 24։ բ Օր. իթ. 23։ Յուդ. 7։
հ Թուղ. իզ. 10։
ձ Ծն. ժթ. 16։
ղ Սաղ. ճժթ. 139, 158։ Եզեկ. թ. 4։
ճ Սաղ. լգ. 17, 19։ ա Կոր. ժ. 13։
մ Յուդ. 4, 7, 8, 10, 16։
յ Յուդ. 8։
ն Յուդ. 9։
շ Երեմ. ժբ. 3։ Յուդ. 10։
ո Փիլ. գ. 19։
չ Տես Հռով. ժգ. 13։
պ Յուդ. 12։
ջ ա Կոր. ժա. 20, 21։
ռ Յուդ. 11։
ս Թուոց. իբ. 5, 7, 21, 23, 28։ Յուդ. 11։

Ցամ Տեառն 66

Յուդ. 12, 13։ Յուդ. 16։ Դոր. բ. 40։ Գղ. ա. 4։ Հմր 20։ Դող. ե. 13։ ա Պետ. բ. 16։ Յովհ. ը. 34։ Հռով. զ. 16։ Գղ. ա. 4։ Հմր 18։ Գղ. ա. 2։ Մատ. ժբ. 45։ Ղուկ. ժա. 26։ Եբր. զ. 4։ և ժ. 26, 27։ Ղուկ. ժբ. 47, 48։ Յովհ. թ. 41։ ժե. 22։ Առակ. իզ. 11։

կային ձայնով խօսելով՝ մարգարէին
17 յիմարութիւնը արգիլեց ։ Ասոնք
ջուր չունեցող աղբիւրներ են , ու
փոթորիկէ քշուած մէգեր . որոնց
համար թանձր խաւարը պահուած
18 է յաւիտեան ։ Քանզի ունայ-
նութեան հպարտ խօսքեր ընելով՝
գիճութիւններով՝ մարմնոյ ցան-
կութիւններով կը խաբեն անոնք՝
որ քիչ մը առաջ փախչեր էին
անոնցմէ՝ որ մոլորութեան մէջ կը
19 պտըտին . Անոնց ազատութիւն
կը խոստանան , և իրենք ապակա-
նութեան ծառաներ են . վասն զի
ինչ բանէ որ մէկը յաղթուի , ա-
20 նոր ծառայ ալ կ'ըլլայ ։ Ինչու որ
եթէ Տէր ու Փրկիչ Յիսուս Քը-
րիստոսի գիտութիւնովը աշխարհիս
պղծութիւններէն հրաժարելէն
ետև՝ դարձեալ անոնց բաներէն բըռ-
նուած յաղթուին , անոնց վերջը
21 առջինէն գէշ կ'ըլլայ ։ Ինչու որ
աղէկ էր անոնց՝ որ բնաւ արդարու-
թեան ճամբան ճանչցած չըլլային ,
քան թէ ճանչնալով ետ դառնա-
յին անոնց սուրբ պատուիրանքէն՝ որ
22 իրենց յանձնուեցաւ ։ Սակայն
անոնց հանդիպեցաւ այն ճշմարիտ
առակին բանը , թէ՝ Շունը նո-
րէն իր փսխածին կը դառնայ , ու
լուացուած խոզը ցեխի մէջ թա-
ւալըտըկելու ։

ԳԼ. Գ

1 Կը հաստատէ Քրիստոսի դատաստանի գա-
լուն ճշմարտութիւնը . 10 կը նկարագրէ թէ
ինչ կերպով աշխարհս պիտի վերջանայ . 11 կը
յորդորէ քրիստոնեաները որ աս բանին սպա-
սելով՝ անարատ վարք ունենան , 15 ու համո-
զուին թէ Տէրոջը երկայնմտութիւնը իրենց
փրկութեանը համար է ; ինչպէս որ Պօղոս
գրեր էր անոնց՝ իր թուղթերուն մէջ ։

Գղ. ա. 13։ Յուդ. 17։ ա Տիմ. դ. 1։ բ Տիմ. գ. 1։ Յուդ. 18։ Գղ. բ. 10։ Եզ. ե. 19։ Երեմ. ժէ. 15։ Եզեկ. ժբ. 22, 27։ Մատ. իդ. 48։ Ղուկ. ժբ. 45։ Սաղ. իդ. 2։ Ծնղ. 6։ Կող. ա. 17։

1 Սիրելիներ՝ աս երկրորդ թուղթը
հիմա ձեզի կը գրեմ . որոնցմով
ձեր անկեղծ միտքը կ'արթընցընեմ
2 յիշելու . Որ սուրբ մարգարէներէն
առաջուց զրուցուած խօսքերը , և
մեր՝ առաքեալներուն Տէրոջը ու Փրկչին ա-
ռաքեալներուն պատուէրները միտ-
3 քերնիդ բերէք ։ Բայց առաջ աս
գիտնաք , որ վերջի օրերը արհա-
մարհողներ և ծաղր ընողներ պիտի
գան , որոնք իրենց ցանկութիւն-
4 ներուն համեմատ պիտի քալեն . Եւ
պիտի ըսեն . Ո՞ւր է անոր գալուն
խոստմունքը . վասն զի քանի որ
հայրերը քնացան , ամէն բան ա-
նանկ կայ, կը մնայ արարածոց ըս-
5 կիզբէն հետէ ։ Քանզի անոնք ( որ
իրենց ուզածը աս է՝ ) այն բանը
մոռցեր են , թէ երկինքը առա-
ջուց եղաւ , ու երկիրը ջուրերէն
և ջուրերով հաստատ կեցեր է
6 Աստուծոյ խօսքովը . Ուստի հին
աշխարհը ջրհեղեղով ապականած
7 կորսուեցաւ . Եւ հիմակուան եր-
կինքը ու երկիրը նոյն խօսքով
պահպանուած են , մինչև դատաս-
տանին՝ ու ամբարիշտ մարդոց կո-
րըստեան օրը՝ կրակի համար պա-
8 հուած ։ Եւ աս մէկ բանը ձեզմէ
ծածուկ չմնայ՝ սիրելիներ , որ Տէ-
րոջը քովը մէկ օրը հազար տարուան
պէս է , ու հազար տարին մէկ օ-
9 րուան պէս ։ Տէրը չուշացըներ
իր խոստմունքը , ինչպէս որ ոմանք
ուշացուցած կը սեպեն , հապա
մեզի երկայնամիտ կ'ըլլայ . ինչու
որ չուզեր որ մէկը կորսուի , հապա
որ ամէնքը ապաշխարանքի գան ։
10 Սակայն Տէրոջը օրը գողի պէս պի-
տի գայ , որ այն ատենը երկինքը
սաստիկ շառաչիւնով պիտի անց-
նի , ու տարերքները բոցնկած պի-
տի լուծուին , երկիրս ալ՝ ու ինչ
գործքեր որ անոր մէջը կը գտնուին ,
11 պիտի այրուին ։ Ուստի աս ամէն
բաները որ պիտի լուծուին , ձեզի
ինչպէս մարդիկ ըլլալ կը վայլէ
սուրբ վարմունքով ու բարեպաշ-
12 տութեամբ , սպասելով Ու ար-
տորալով Աստուծոյ օրուանը գա-
լուն , որուն մէջ երկինքը կրակով
այրուած պիտի լուծուի , ու տա-
րերքները բոցնկած պիտի հալին ։
13 Սակայն իր խոստմունքին համե-
մատ՝ նոր երկինքի մը ու նոր երկրի
մը կը սպասենք , որոնց մէջ արդա-
րութիւն կը բնակի ։
14 Ուստի սիրելիներ՝ ասոնց սպա-
սելով ջանացէք , որ այն ձեզ ան-
բիծ ու անարատ գտնէ խաղաղու-
15 թիւնով . Եւ մեր Տէրոջը երկայն-
մտութիւնը փրկութիւն սեպե-
ցէք . ինչպէս որ մեր սիրելի եղ-
բայրը Պօղոս ալ իրեն տրուած
իմաստութիւնովը գրեց ձեզի .
16 Ինչպէս որ ամէն թուղթերուն
մէջն ալ աս բաներուս վրայով կը
խօսի . որոնց մէջ քանի մը դը-
ժուարիմաց խօսքեր կը գտնուին ,
որ զանոնք տգէտները ու անհաս-
տատները ծուռ կողմը կը դարձը-
նեն , ինչպէս ուրիշ գիրքերն ալ՝
իրենց անձին կորստեանը համար ։
17 Ուրեմն դուք սիրելիներ՝ առա-
ջուց գիտնալով զգուշ եղէք , որ
չըլլայ թէ անօրէններուն խաբէու-
թենէն բռնուած՝ ձեր հաստատու-
18 թենէն իյնաք . Հապա աճեցէք
մեր Տէր ու Փրկիչ Յիսուս Քրիս-
տոսի շնորհքովը ու գիտութիւ-
նովը . անոր փառք հիմա ալ , ու
մինչև յաւիտենական օրն ալ . ա-
մէն ։

Ցամ Տեառն 66

Ծն. ա. 6, 9։ Սաղ. լգ. 6։ Եբր. ժա. 3։ Ծն. է. 11, 21, 22, 23։ Գղ. բ. 5։ Հմր 10։ Մատ. իե. 41։ բ Թես. ա. 8։ Սաղ. ղ. 4։ Ամբ. բ. 3։ Եբր. ժ. 37։ Ես. լ. 18։ ա Պետ. գ. 20։ Հմր 15։ Եզեկ. ժբ. 23, 32։ լգ. 11։ Հռով. բ. 4։ ա Տիմ. բ. 4։ Մատ. իդ. 43։ Ղուկ. ժբ. 39։ ա Թես. ե. 2։ Յայտ. գ. 3։ ժզ. 15։ Սաղ. ճբ. 26։ Ես. ծա. 6։ Մատ. իդ. 35։ Մար. ժգ. 31։ Եբր. ա. 11։ Յայտ. ի. 11։ իա. 1։ ա Պետ. ա. 15։ ա Կոր. ա. 7։ Տիտ. բ. 13։ Սաղ. ծ. 3։ Ես. լդ. 4։ Միք. ա. 4։ Հմր 10։ Ես. կե. 17։ կզ. 22։ Յայտ. իա. 1, 27։ ա Կոր. ա. 8։ ժե. 58։ Փիլ. ա. 10։ ա Թես. գ. 13։ ե. 23։ Հռով. բ. 4։ ա Պետ. գ. 20։ Հմր 9։ Հռով. ը. 19։ ա Կոր. ժե. 24։ ա Թես. դ. 14։ Մար. ժգ. 23։ Գղ. ա. 12։ Եփե. դ. 14։ Գղ. ա. 10, 11։ բ. 18։ Եփե. դ. 15։ ա Պետ. բ. 2։ բ Տիմ. դ. 18։ Յայտ. ա. 6։

ԱՌԱՋԻՆ ԸՆԴՀԱՆՐԱԿԱՆ ԹՈՒՂԹ

# ՅՈՎՀԱՆՆՈՒ ԱՌԱՔԵԼՈՅՆ

Յամի Տեառն
90

ա Յովհ. ա. 1: Գլ. բ. 13:
բ Յովհ. ա. 14: բ Պետ. ա. 16: Գլ. դ. 14:
գ Ղուկ. իդ. 39: Յովհ. ի. 27:
դ Յովհ. ա. 4: ժա. 25: ժդ. 6:
ե Հռովմ. ժզ. 26: ա Տիմ. գ. 16: Գլ. ե. 5:
զ Յովհ. իա. 24: Գործ. բ. 32:
է Գլ. ե. 20:
ը Յովհ. ա. 1, 2:
թ Գործ. դ. 20:
ժ Յովհ. ժէ. 21: ա Կոր. ա. 9: Գլ. բ. 24:
ի Յովհ. ժե. 11: ժզ. 24: բ Յովհ. 12:
լ Գլ. գ. 11:
խ Յովհ. ա. 9: ը. 12: թ. 5: ժբ. 35, 36:
ծ բ Կոր. զ. 14: Գլ. բ. 4:
կ ա Կոր. զ. 11: Եփե. ա. 7: Եբր. թ. 14: ա Պետ. ա. 19: Գլ. բ. 2: Յայտ. ա. 5:
հ գ Թագ. ը. 46: բ Մն. զ. 36: Յոբ. թ. 2: ժե. 14: ի. 4: Առակ. ի. 9: Ժող. է. 20: Յակ. գ. 2:
ձ Գլ. բ. 4:
ղ Սաղ. լբ. 5: Առակ. իը. 13:
ճ [illegible] 7: Սաղ. ծա. 2:

## ԳԼՈՒԽ Ա

1 Առաքեալը կը նկարագրէ Քրիստոսի անձը՝ որով մենք յաւիտենական կեանք ունինք՝ Աստուծոյ հետ հաղորդութիւն ունենալով․ 5 կը յորդորէ որ սուրբ վարք ալ ունենանք, որ վկայութիւն մը ըլլայ՝ թէ մեր հաւատքին դաւանութիւնը և հաղորդութիւնը ճշմարիտ է, և որ հաստատ ապահովութիւն մը ունենանք՝ թէ Քրիստոսի մահուամբը մեր մեղքերուն թողութիւն կայ ։

1 Կենաց Բանին վրայով ա որ սկիզ-
բէն էր, որուն համար լսեցինք.
որն որ մեր աչքերովը տեսանք ;
բ որուն նայեցանք, գ ու մեր ձեռ-
2 քերը շօշափեցին․ (դ Եւ կեանքը
ե յայտնուեցաւ, ու տեսանք, զ և
կը վկայենք, է ու ձեզի կը պատմենք
ան յաւիտենական կեանքը, ը որ
Հօրը քովն էր՝ ու մեզի յայտնուե-
3 ցաւ․) թ Ան որ տեսանք ու լսեցինք՝
ձեզի կը պատմենք, որ դուք ալ
մեզի հետ հաղորդութիւն ունե-
նաք․ ժ և մեր հաղորդութիւնը Հօ-
րը հետ է՝ ու իր Որդւոյն Յիսուս
4 Քրիստոսին հետ ։ Եւ աս բաները
կը գրենք ձեզի, ի որ ձեր ուրախու-
թիւնը կատարեալ ըլլայ ։
5 լ Եւ ասիկայ է ան պատգամը որ
իրմէն լսեցինք՝ ու ձեզի կը պատ-
մենք, խ թէ Աստուած լոյս է, ու
անոր մէջը բնաւ խաւար չկայ ։
6 ծ Թէ որ ըսենք թէ՝ Անոր հետ հա-
ղորդութիւն ունինք, ու խաւարի
մէջ պտըտինք, սուտ կը զրուցենք՝
և ճշմարտութիւնը չենք ըներ ։
7 Հապա թէ որ լոյսի մէջ քալենք,
ինչպէս որ անիկայ լոյսի մէջ է,
իրարու հետ հաղորդութիւն կ՚ու-
նենանք, կ ու անոր Որդւոյն Յիսուս
Քրիստոսին արիւնը մեզ ամէն մեղ-
8 քէ կը սրբէ ։ հ Թէ որ ըսենք թէ՝
Մենք մեղք մը չունինք, ինքզինք-
նիս կը խաբենք, ձ ու մեր մէջը ճըշ-
9 մարտութիւն չկայ ։ ղ Թէ որ խոս-
տովանինք մեղքերնիս, հաւատա-
րիմ ու արդար է անիկայ մեր մեղ-
քերուն թողութիւն տալու, ճ և
մեզ բոլոր անիրաւութենէ սրբե-
10 լու ։ Թէ որ ըսենք թէ՝ Մեղք մը
չգործեցինք, սուտղրուց կ՚ընենք
անիկայ, ու անոր խօսքը մեր մէջը
չէ ։

## ԳԼ․ Բ

1 Կը զգուշացընէ տկարութեան մեղքերէն ։ 3 Կը սորվեցընէ թէ ճշմարտապէս զԱստուած ճանչնալը կը կայանայ անոր պատուիրանքները պահելու մէջ, 9 մեր եղբայրները սիրելու, 15 ու աշխարհը չսիրելու մէջ ։ 18 Պարտինք հեռու կենալ մոլորեցուցիչներէն, 20 որոնց մոլորութիւններէն աստուածապաշտները ապահով և ազատ կ՚ըլլան՝ հաստատուն հաւատքով և սուրբ վարքով պահպանուած ։

1 Իմ որդեակներս՝ աս բաները ձեզի
կը գրեմ որ մեղք չգործէք․ և
թէ որ մէկը մեղք գործելու ըլլայ,
ա Հօրը քով բարեխօս ունինք Յի-
2 սուս Քրիստոս արդարը․ բ Եւ անի-
կայ մեր մեղքերուն քաւութիւն է,
և չէ թէ միայն մերիններուն, գ հա-
պա բոլոր աշխարհին ալ ։
3 Ու ասով գիտենք թէ անիկայ
ճանչցանք, թէ որ անոր պատուի-
4 րանքները պահենք ։ դ Ան որ կ՚ըսէ
թէ՝ Ես անիկայ ճանչցայ, ու անոր
պատուիրանքները չպահեր, ե ստա-
խօս է, և անոր մէջը ճշմարտու-
5 թիւն չկայ ։ զ Բայց ան որ անոր
խօսքը կը պահէ, է իրաւցընէ իր
մէջը կատարեալ է Աստուծոյ սէրը․
ը ասով կը ճանչնանք թէ անոր մէջն
6 ենք ։ թ Ան որ կ՚ըսէ թէ անոր մէջը
կը բնակի, ժ անանկ պէտք է որ քա-
լէ՝ ինչոր որ անիկայ քալեց ։
7 Սիրելիներ՝ ի չէ թէ նոր պա-
տուիրանք մը կը գրեմ ձեզի, լ հա-
պա ան հին պատուիրանքը որ ըս-
կիզբէն ՚ի վեր ունէիք․ և հին պա-
տուիրանքը ան խօսքն է, որ դուք
8 սկիզբէն լսեցիք ։ Դարձեալ խ նոր
պատուիրանք մը կը գրեմ ձեզի, որ
ճշմարիտ է անոր մէջը ու ձեր մէջը․
ծ ինչու որ խաւարը կ՚անցնի, կ ու
ճշմարիտ լոյսը արդէն կ՚երեւնայ ։
9 հ Ան որ կ՚ըսէ՝ թէ լոյսի մէջ է, ու
իր եղբայրը կ՚ատէ, անիկայ տա-
10 կաւին խաւարի մէջ է ։ ձ Ան որ
իր եղբայրը կը սիրէ, լոյսի մէջ կը
բնակի, ղ ու իր մէջը գայթակղու-
11 թիւն չկայ․ Բայց ան որ իր եղբայ-
րը կ՚ատէ, խաւարի մէջ է, ճ ու
խաւարի մէջ կը քալէ, և չգիտեր
թէ ուր կ՚երթայ, ինչու որ խաւա-
րը անոր աչքերը կուրցուցեր է ։
12 Կը գրեմ ձեզի՝ որդեակներ, մ ին-

Յամի Տեառն
90

ա Հռովմ. ը. 34: ա Տիմ. բ. 5: Եբր. է. 25: թ. 24:
բ Հռովմ. գ. 25: բ Կոր. ե. 18: Գլ. ա. 7: դ. 10:
գ Յովհ. ա. 29: դ. 42: ժա. 51, 52: Գլ. դ. 14:
դ Գլ. ա. 6: դ. 20:
ե Գլ. ա. 8:
զ Յովհ. ժդ. 21, 23:
է Գլ. դ. 12:
ը Գլ. դ. 13:
թ Յովհ. ժե. 4, 5:
ժ Մատ. ժա. 29: Յովհ. ժգ. 15: ա Պետ. բ. 21:
ի բ Յովհ. 5:
լ Գլ. գ. 11: բ Յովհ. 5:
խ Յովհ. ժգ. 34: ժե. 12:
ծ Հռովմ. ժգ. 12: Եփե. ե. 8: ա Թես. ե. 5, 8:
կ Յովհ. ա. 9: ը. 12: ժբ. 35:
հ ա Կոր. ժգ. 2: բ Պետ. ա. 9: Գլ. գ. 14, 15:
ձ Գլ. գ. 14:
ղ բ Պետ. ա. 10:
ճ Յովհ. ժբ. 35:
մ Ղուկ. իդ. 47: Գործ. դ. 12: ժ. 43: ժգ. 38: Գլ. ա. 7:

Յամ. Տեառն 90

չու որ ձեր մեղքերը թողուած են
13 անոր անուանը համար ։ Կը գրեմ
ձեզի՝ հայրեր, ինչու որ դուք ճանչ-
ցաք անիկայ՝ որ սկիզբէն է ։ Կը
գրեմ ձեզի՝ երիտասարդներ, ինչու
14 որ դուք չարին յաղթեցիք ։ Կը
գրեմ ձեզի՝ տղաքներ, ինչու որ
դուք ճանչցաք Հայրը ։ Գրեցի
ձեզի՝ հայրեր, ինչու որ դուք
ճանչցաք անիկայ՝ որ սկիզբէն է ։
Գրեցի ձեզի՝ երիտասարդներ, ինչ-
չու որ դուք ուժով էք, և Աստու-
ծոյ խօսքը ձեր մէջը կը բնակի, ու
15 չարին յաղթեցիք ։ Մի սիրէք
աշխարհս, ոչ ալ ինչ որ աշխար-
16 հիս մէջ է ։ Թէ որ մէկը աշխար-
հը կը սիրէ, անոր ներսի դին Հօրը
սէրը չկայ. քանզի ամէն բան որ
աշխարհի մէջ է, մարմնոյ ցանկու-
թիւնը, ու աչաց ցանկութիւնը,
և աս կեանքիս ամբարտաւանու-
թիւնը, Հօրմէն չէ, հապա աս
17 աշխարհէս է ։ Աշխարհս ալ
կ'անցնի, անոր ցանկութիւնն ալ.
բայց ան որ Աստուծոյ կամքը կը
կատարէ, յաւիտեան կը մնայ ։
18 Որդեակներ՝ վերջին ժամանակն
է. ու ինչպէս որ լսեցիք՝ թէ Նե-
ռը պիտի գայ, և արդէն շատ Նե-
ռեր եկած են. անկէ կ'իմանանք
19 թէ վերջին ժամանակ է ։ Մեզմէ
ելան ասոնք, բայց մեզմէ չէին.
ինչու որ եթէ մեզմէ ըլլային, մեր
հետը պիտի մնային. հապա ելան
որ յայտնի ըլլան՝ թէ անոնք
20 ամէնը մեզմէ չէին ։ Բայց դուք
օծութիւն ունիք Սուրբէն, ու
21 ամէն բան գիտէք ։ Չգրեցի ձեզի՝
իբր թէ ճշմարտութիւնը չէք գի-
տեր, հապա թէ գիտէք անիկայ,
ու նաև թէ ամէն ստութիւն
22 ճշմարտութենէ չէ ։ Ո՞վ է ստա-
խօս, եթէ ոչ ան որ կ'ուրանայ
թէ Յիսուսը Քրիստոս չէ. անիկայ
է Նեռը որ կ'ուրանայ Հայրը ու
23 Որդին ։ Ամէն ով որ կ'ուրանայ
Որդին, անիկայ Հայրն ալ չընդու-
նիր. բայց ան որ կը խոստովանի
Որդին, անիկայ Հայրն ալ կ'ընդու-
24 նի ։ Ուրեմն ինչ որ դուք սկիզ-
բէն լսեցիք, թող անիկայ ձեր
մէջը բնակի. թէ որ ան սկիզբէն
լսածնիդ ձեր մէջը բնակի, դուք
ալ Որդիին ու Հօրը մէջ պիտի
25 բնակիք ։ Եւ ասիկայ է ան
խոստմունքը, որ ինքը մեզի խոս-
տացաւ, այսինքն յաւիտենական
26 կեանքը ։ Աս բաները ձեզի գրեցի՝
ձեզ մոլորցնողներուն համար ։
27 Եւ ան օծութիւնը՝ որ դուք իր-
մէն ընդունեցիք, ձեր մէջը կը մնայ.
ու պէտք չէ որ մէկը ձեզի սորվե-
ցընէ. հապա ինչպէս որ նոյն
օծութիւնը ձեզի կը սորվեցընէ ա-
մէն բանի վրայով, և ճշմարիտ է՝
ու սուտ չէ, և ինչպէս որ անիկայ
ձեզի սորվեցուց, անոր մէջը կե-
ցէք ։
28 Ու հիմա որդեակներ՝ անոր մէջը
կեցէք, որ երբ անիկայ յայտ-
նուի, մենք համարձակութիւն ու-
նենանք, ու անկէ չամչնանք իր
29 գալու ատենը ։ Եթէ որ գիտէք
թէ անիկայ արդար է, կ'իմանաք
թէ՝ ամէն ով որ արդարութիւն
կը գործէ, անկէ ծնած է ։

## ԳԼ. Գ

1 Յիշեցընելով Աստուծոյ անզուգական սէրը՝ որով մեզ իրեն որդիներ կ'ընէ. 3 կը յորդորէ որ հնազանդութեամբ անոր պատուիրանքները պահենք. 11 ու նաև եղբայրաբար մէկզմէկ սիրենք ։

1 Տեսէք՝ Հայրը ինտո՛ր սէր շնորհեց
մեզի, որ մենք Աստուծոյ որ-
դիք ըսուինք. ասոր համար աշ-
խարհ մեզ չճանչնար, ինչու որ
2 զանիկայ ալ չճանչցաւ ։ Սիրելի-
ներ՝ հիմա մենք Աստուծոյ որ-
դիքն ենք, և տակաւին յայտնի
չէ թէ ինչ պիտի ըլլանք. բայց գի-
տենք որ երբ անիկայ յայտնուի,
անոր պէս պիտի ըլլանք. վասն
զի անիկայ պիտի տեսնենք՝ ինչպէս
որ է ։
3 Եւ ամէն ո՛վ որ աս յոյսը անոր
վրայ ունի, ինքզինքը կը մաքրէ
4 ինչպէս որ անիկայ մաքուր է ։ Ա-
մէն ո՛վ որ մեղք կը գործէ, անի-
կայ անօրէնութիւն ալ կը գործէ,
և մեղքը անօրէնութիւն է ։
5 Եւ գիտէք որ անիկայ անոր հա-
մար յայտնուեցաւ, որ մեր մեղքե-
րը վերցընէ. ու իր մէջը մեղք չկայ ։
6 Ամէն ո՛վ որ անոր մէջը կը կենայ,
մեղք չգործեր. ամէն ո՛վ որ մեղք
կը գործէ, զանիկայ տեսած չէ, ու
7 զանիկայ ճանչցած չէ ։ Որդեակ-
ներ՝ մէկը ձեզ չխաբէ. ան որ ար-
դարութիւն կը գործէ՝ արդար է,
8 ինչպէս որ Անիկայ արդար է ։ Եւ
ան որ մեղք կը գործէ՝ Սատանայէն
է, ինչու որ Սատանան սկիզբէն
՚ի վեր կը մեղանչէ. ասոր համար
Աստուծոյ Որդին յայտնուեցաւ, որ
9 Սատանային գործքերը քակէ ։ Ա-
մէն ո՛վ որ Աստուծմէ ծնած է,
մեղք չգործեր, ինչու որ անոր սեր-
մը իր մէջը կը մնայ, ու չկրնար
մեղք գործել, քանզի Աստուծմէ
10 ծնած է ։ Ասով յայտնի են Աս-
տուծոյ որդիքը՝ ու Սատանայի որ-
դիքը ։
Ամէն ով որ արդարութիւն չը-
գործեր, անիկայ Աստուծմէ չէ, և
ան ալ որ իր եղբայրը չսիրեր ։
11 Ինչու որ ասիկայ ան պատուի-

Յամ. Տեառն 90

Յամ Տեառն 90

ա Յով. ժգ. 34: ժե. 12: Հմր 23: Գւ. գ. 7, 21: բ Յոհ. 5:
ն Ծն. դ. 4, 8: Եբր. ժա. 4: Յուդ. 11:
ո Յով. ժե. 18, 19: ժէ. 14: բ Տիմ. գ. 12:
ն Գւ. բ. 10:
զ Գւ. բ. 9, 11:
է Մատ. ե. 21, 22: Գւ. գ. 20:
ա Գաղ. ե. 21: Յայտ. իա. 8:
ա Յով. գ. 16: ժե. 13: Հռով. ե. 8: Եփ. ե. 2, 25: Գւ. գ. 9, 11:
կ Օր. ժե. 7: Ղուկ. գ. 11:
ա Գւ. գ. 20:
բ Եզեկ. լգ. 31: Հռով. ժբ. 9: Եփե. դ. 15: Յակ. բ. 15: ա Պետ. ա. 22:
ց Յով. ժբ. 37: Գւ. ա. 8:
ա Ղուկ. գ. 4:
ք Յոբ. իբ. 26: Եր. ժ. 22: Գւ. բ. 28: գ. 17:
+ Մատ. էգ. 15: ժա. 18, 19: Ղուկ. ժե. 29: Եբր. իթ. 12: Մար. ե. 8: իա. 22: Մար. ժա. 24: Յով. ժգ. 13: ժե. 7: ժգ. 23, 24: Յակ. ե. 16: Գւ. ե. 14:
ա Յով. ը. 29: թ. 31:
ձ Յով. գ. 29: ժե. 3:
ա Մատ. իբ. 39: Յով. ժգ. 34: ժե. 12: Եփե. ե. 2: ա Թես. դ. 9: ա Պետ. գ. 8: Հմր 11: Գւ. գ. 21:
բ Գւ. բ. 8, 10:

րանքն է՝ որ դուք սկիզբէն լսեցիք,
12 որ մէկզմէկ սիրենք: Ոչ թէ
Կայենին պէս՝ որ չարէն էր, ու իր
եղբայրը սպաննեց. և ինչո՞ւ համար
զանիկայ սպաննեց. անոր համար
որ իր գործքերը չար էին, ու իր
13 եղբօրը գործքերը արդար: Մի զար-
մանաք և՛ եղբայրներս՝ թէ որ աշ-
14 խարհը ձեզ ատէ: Մենք գիտենք
որ մահէն կեանքի փոխուեցանք.
ինչու որ եղբայրները կը սիրենք.
ան որ եղբայրը չսիրեր, մահուան
15 մէջ կը մնայ: Ամէն ով որ իր
եղբայրը կ՚ատէ, մարդասպան է.
ու գիտէք որ ամէն մարդասպան
իր մէջը բնակած յաւիտենական
16 կեանք չունի: Ասով գիտցանք
Քրիստոսի սէրը, որ անիկայ իր
կեանքը մեզի համար դրաւ. մենք
ալ պարտաւոր ենք մեր եղբայրնե-
րուն համար դնել մեր կեանքը:
17 Բայց ան որ աշխարհիս բարիքը
ունի, և իր եղբայրը բանի մը կա-
րօտ կը տեսնէ, ու իր գութը անկէ
կը գոցէ. ինչպէ՞ս Աստուծոյ սէրը
18 անոր մէջը բնակած կ՚ըլլայ: Որ-
դեակներս՝ ոչ թէ խօսքով ու լե-
զուով սիրենք, հապա գործքով ու
ճշմարտութիւնով:
19 Եւ ասով կը ճանչնանք թէ
ճշմարտութենէն ենք, ու մեր
սրտերուն համարձակութիւնովը ա-
20 նոր առջևը պիտի երևնանք: Քան-
զի թէ որ մեր սիրտերը մեզ կը մե-
ղադրեն, հապա Աստուած մեր սիր-
տերէն մեծ է՝ և ամէն բան գիտէ:
21 Սիրելիներ՝ թէ որ մեր սիրտերը
մեզ չմեղադրեն, համարձակու-
թիւն կ՚ունենանք Աստուծոյ առ-
22 ջևը. Եւ ինչ որ խնդրենք, կ՚առ-
նենք անկէ. ինչու որ իր պատուի-
րանքները կը պահենք, ու իր
առջին հաճոյ եղած բաները կ՚ը-
23 նենք: Եւ ասիկայ է անոր պա-
տուիրանքը, որ իր Որդւոյն Յի-
սուս Քրիստոսին անուանը հաւա-
տանք՝ ու մէկզմէկ սիրենք, ինչ-
պէս որ մեզի պատուէր տուաւ:
24 Եւ ան որ անոր պատուիրանք-
ները կը պահէ, անոր մէջը կը կե-
նայ. ու անիկայ ալ ասոր մէջը.
և ասկէ գիտենք՝ որ անիկայ մեր
մէջը կը կենայ, այն Հոգիէն
որ մեզի տուաւ:

ԳԼ. Դ

1 Կը պատուիրէ չհաւատալ ամէն վարդապետներուն, որոնք կը պարծենան՝ թէ Աստուծոյ Հոգին ունին, այլ փորձել զանոնք ուղղափառ հաւատքին կանոններովը. 7 և շատ փաստերով կը յորդորէ զանոնք եղբայրական սէր ունենալու:

1 Սիրելիներ՝ ամէն հոգիի մի՛ հա-
ւատաք. հապա հոգիները փոր-
ձեցէք թէ արդեօք Աստուծմէ՛ են.
ինչու որ աշխարհիս մէջ շատ
2 սուտ մարգարէներ ելած են: Ասով
կրնաք ճանչնալ Աստուծոյ Հո-
գին. ամէն հոգի որ Յիսուս Քրիս-
տոսը մարմինով եկած կը խոստո-
3 վանի, անիկայ Աստուծմէ է. Եւ
ամէն հոգի որ Յիսուս Քրիստոսը
մարմինով եկած չխոստովանիր,
անիկայ Աստուծմէ չէ. ու ասիկայ
Նեռին հոգին է, որուն համար լսե-
ցիք՝ թէ պիտի գայ, ու հիմակուը-
4 նէ ալ աշխարհիս մէջն է: Դուք
Աստուծմէ էք՝ որդեակներ, ու ա-
նոնց յաղթեցիք. քանզի մեծ է
անիկայ որ ձեր մէջն է, քան թէ
անիկայ՝ որ աշխարհիս մէջն է:
5 Անոնք աշխարհէ են. անոր հա-
մար աշխարհի վրայով կը խօսին,
և աշխարհս մտիկ կ՚ընէ անոնց:
6 Մենք Աստուծմէ ենք. ան որ
զԱստուած կը ճանչնայ, մեզի մտիկ
կ՚ընէ. ան որ Աստուծմէ չէ, մեզի
մտիկ չըներ. ասով կը ճանչնանք
ճշմարտութեան Հոգին ու մո-
լորութեան հոգին:
7 Սիրելիներ՝ մէկզմէկ սիրենք.
ինչու որ սէրը Աստուծմէ է. ու
ամէն ով որ կը սիրէ, Աստուծմէ
ծնած է, ու կը ճանչնայ զԱս-
8 տուած: Ան որ չսիրեր, զԱստուած
չճանչնար. ինչու որ Աստուած
9 սէր է: Աս բանիս մէջ Աստու-
ծոյ սէրը մեր վրայ յայտնի եղաւ,
որ Աստուած իր միածին Որդին
աշխարհք խրկեց, որ անոր միջո-
10 ցովը ապրինք: Աս բանիս մէջն է
սէրը, ոչ թէ մենք սիրեցինք
զԱստուած, հապա որ անիկայ մեզ
սիրեց, ու իր Որդին խրկեց մեր
մեղքերուն քաւութիւն ըլլալու:
11 Սիրելիներ՝ թէ որ Աստուած մեզ
ասանկ սիրեց, ուրեմն մենք ալ կը
պարտաւորինք մէկզմէկ սիրել:
12 Մէկը երբէք Աստուած տեսած
չէ. թէ որ մէկզմէկ կը սիրենք,
Աստուած մեր մէջը կը բնակի, ու
անոր սէրը մեր մէջը կատարեալ է:
13 Ասով գիտենք թէ մենք անոր
մէջը կը բնակինք՝ ու անիկայ մեր
մէջը, որ իր Հոգիէն մեզի տուաւ:
14 Եւ մենք տեսանք ու կը վկայենք՝
որ Հայրը իր Որդին խրկեց աշ-
15 խարհի Փրկիչ ըլլալու: Ո՛վ որ
կը խոստովանի թէ Յիսուսը Որդի
Աստուծոյ է, Աստուած անոր մէ-
ջը կը բնակի, ան ալ Աստուծոյ
16 մէջը: Եւ մենք ճանչցանք ու
հաւատացինք այն սէրը որ Աս-
տուած մեր վրայ ունի. Աստուած
սէր է. և ան որ սիրոյ մէջ կը

Յամ Տեառն 90

ա Երեմ. իթ. 8: Մատ. իդ. 4:
բ ա Կոր. ժգ. 29: ա Թես. ե. 21: Յայտ. բ. 2:
գ Մատ. իդ. 5, 24: Գործ. ի. 30: ա Տիմ. գ. 1: բ Պետ. բ. 1: Գւ. բ. 18: բ Յոհ. 7:
դ ա Կոր. ժբ. 3: Գւ. ե. 1:
ե Գւ. բ. 22: բ Յոհ. 7:
զ Ղուկ. ժե. 7: Գւ. բ. 18, 22:
է Գւ. ե. 4: բ Յոհ. ժբ. 31: ժգ. 30: ժգ. 11: ա Կոր. բ. 12: Եփե. բ. 2:
ը Յով. ը. 47: ժ. 27: ա Կոր. ժգ. 37: բ Կոր. ժ. 7:
թ Յով. ը. 31: ժէ. 19: ժէ. 14:
ժ Յով. բ. 47: ժ. 27: ա Կոր. ժգ. 37: բ Կոր. ժ. 7:
ի Եփե. բ. 20: Յով. ժգ. 17:
լ Գւ. գ. 10, 11, 23:
խ Գւ. բ. 4: գ. 6:
ծ Հմր 16:
կ Յով. գ. 16: Հռով. ե. 8: ը. 32: Գւ. գ. 16:
հ Գւ. ե. 11:
ձ Յով. ժե. 16: Հռով. ե. 8, 10: Տիտ. գ. 4:
ղ Գւ. բ. 2:
ճ Մատ. ժբ. 33: Յով. ժե. 12, 13: Գւ. գ. 16:
մ Յով. ա. 18: ա Տիմ. զ. 16: Հմր 20:
յ Գւ. բ. 5:
ն Հմր 18:
շ Յով. ժգ. 20: Գւ. գ. 24:
ո Յով. ա. 14: Գւ. ա. 1, 2:
չ Յով. գ. 17:
պ Հռով. ժ. 9: Գւ. ե. 1, 5:
ջ Հմր 8:
ռ Գւ. գ. 24: Հմր 12:

ք Յով. ժգ. 23: ժե. 10: Գւ. գ. 12: ր Յով. ժէ. 21, 23: ե Հռով. ը. 9: Գւ. գ. 13:

Յամի Տեառն 90

բնակի . Աստուծոյ մէջ կը բնակի .
17 ու Աստուած անոր մէջը ։ Ասով
սէրը մեր վրայ կատարեալ կ'ըլլայ .
որ համարձակութիւն ունենանք
դատաստանին օրը . Վասն զի ինչ-
պէս է ինքը , անանկ ալ մենք ենք
18 աս աշխարհիս մէջ ։ Սիրոյ մէջ
վախ չկայ , հապա կատարեալ սէրը
վախը մէկդի կը ձգէ . ինչու որ վա-
խը տանջանքի ենթակայ է , ուստի
ան որ կը վախնայ . սիրոյ մէջ կա-
19 տարեալ չէ ։ Մենք զանիկայ կը
սիրենք . ինչու որ առաջ անիկայ
20 մեզ սիրեց ։ Եթէ որ մէկը ըսէ թէ՝
Ես Աստուած կը սիրեմ , ու իր
եղբայրը ատէ , անիկայ ստախօս է .
քանզի ան որ իր եղբայրը չսիրեր՝
որ կը տեսնէ , զԱստուած՝ որ չը-
տեսներ , ինտո՞ր կրնայ սիրել ։
21 Եւ անկէ աս պատուէրը ունինք ,
թէ ան որ զԱստուած կը սիրէ , իր
եղբայրն ալ սիրէ ։

ԳԼ . Ե

1 Ան որ զԱստուած կը սիրէ . անոր որդիներն ալ կը սիրէ ու կը պահէ անոր պատուիրանքները . 3 որոնք ծանրութիւն մը չեն ։ 9 Յիսուս Աստուծոյ որդին ըլլալով . կարող է մեզ փրկելու . 14 ու մեր աղօթքները լսելու որ կը մտադիմենք թէ մեր անձերուն և թէ ուրիշներուն համար ։

1 Ամէն ով որ կը հաւատայ թէ
Յիսուսը Քրիստոսն է , Աս-
տուծմէ ծնած է . և ամէն ով որ
ծնողը կը սիրէ . անկէ ծնածն ալ
2 կը սիրէ ։ Ասով կը ճանչնանք թէ
Աստուծոյ որդիները կը սիրենք ,
երբոր Աստուած սիրենք , ու անոր
3 պատուիրանքները պահենք ։ Ինչու
որ ասիկայ է Աստուծոյ սէրը .
որ անոր պատուիրանքները պա-
հենք . և անոր պատուիրանքները
4 ծանր բան չեն . Վասն զի ան ա-
մէնը որ Աստուծմէ ծնած է . աշ-
խարհին կը յաղթէ . և ասիկայ է
յաղթութիւնը՝ որ աշխարհին կը
յաղթէ , այսինքն մեր հաւատքը ։
5 Ո՞վ է որ աշխարհին կը յաղթէ .
եթէ ոչ անիկայ՝ որ կը հաւատայ
թէ Յիսուսը Որդի Աստուծոյ է ։
6 Ասիկայ է՝ որ եկաւ ջուրով և
արիւնով , այսինքն Յիսուս Քրիս-
տոս . չէ թէ միայն ջուրով , հա-
պա ջուրով ու արիւնով . և Հո-
գին է որ կը վկայէ . ինչու որ Հո-
7 գին ճշմարտութիւն է . Վասն զի
իրեք են՝ որ [ երկինքի մէջ կը վկա-
յեն . Հայրը՝ Բանը ու Սուրբ Հո-
8 գին . և աս իրեքը մէկ են . Ու ի-
րեք են որ երկրի վրայ ] կը վկայեն .
Հոգին՝ ջուրը ու արիւնը . և իրեքը
9 միաբան են ։ Եթէ որ մարդոց վկա-
յութիւնը կ'ընդունինք , Աստու-
ծոյ վկայութիւնը աւելի մեծ է .
ինչու որ ասիկայ է Աստուծոյ վը-
կայութիւնը , որ իր Որդւոյն հա-
10 մար վկայեց ։ Ան որ Աստուծոյ Որ-
դիին կը հաւատայ , վկայութիւ-
նը իր մէջը ունի . ան որ Աստուծոյ
չհաւատար , ստախօս կ'ընէ անի-
կայ . ինչու որ չհաւատար ան վը-
կայութեանը՝ որ Աստուած իր Որ-
11 դւոյն համար վկայեց ։ Եւ վկա-
յութիւնը աս է , որ Աստուած մե-
զի յաւիտենական կեանք տուաւ .
ու աս կեանքը անոր Որդւոյն
12 մէջն է ։ Ան որ Որդին ընդունած
է . կեանք ունի . և ան որ Աստու-
ծոյ Որդին ընդունած չէ , կեանք
չունի ։
13 Աս բաները գրեցի ձեզի՝ որ
գիտնաք թէ յաւիտենական կեանք
ունիք դուք՝ որ Աստուծոյ Որդւոյն
14 անուանը կը հաւատաք ։ Եւ ան
համարձակութիւնը որ մենք անոր
քովը ունինք՝ աս է , որ ինչ բան
որ խնդրելու ըլլանք իր կամքին հա-
15 մեմատ՝ կը լսէ մեզի . Եւ թէ որ
գիտնանք թէ մեզի կը լսէ , ինչ որ
խնդրելու ըլլանք , այսպէս կը գիտ-
նանք թէ կ'առնենք խնդիրքներս , որ
կը խնդրենք իրմէն ։
16 Թէ որ մէկը տեսնէ որ իր եղ-
բայրը մեղք մը գործեց՝ չէ թէ
մահացու . թող խնդրէ ու Աս-
տուած անոր կեանք պիտի տայ ան
մահացու չեղած մեղքը գործողին .
մեղք կայ որ մահացու է , չեմ
17 ըսեր որ անոր համար խնդրէ . Ա-
մէն անիրաւութիւն մեղք է . և
մեղք կայ որ մահացու չէ ։
18 Գիտենք որ ան ամէնը որ Աս-
տուծմէ ծնած է , մեղք չգործեր .
հապա ան որ Աստուծմէ ծնած է ,
իր անձը կը պահէ . ու չարը իրեն
19 չդպչիր ։ Գիտենք որ մենք Աս-
տուծմէ ենք . ու բոլոր աշխարհք
20 չարի մէջ է ։ Եւ գիտենք որ
Աստուծոյ Որդին եկաւ , ու մե-
զի միտք տուաւ . որ ճշմարիտը
ճանչնանք . և ան ճշմարիտին
մէջն ենք՝ իր Որդւոյն Յիսուս
Քրիստոսին մէջը . ասիկայ է ճըշ-
մարիտ Աստուած՝ ու յաւիտենա-
21 կան կեանք . Որդեակներ , ինք-
զինքնիդ կուռքերէն պահեցէք ։

Յամի Տեառն 90

ա Յակ . բ . 13 . Գլ . բ . 28 . գ . 19 . 21 ։
հ Գլ . գ . 3 ։
ս Հռ . 12 ։
ր Գլ . բ . 4 ։ դ . 17 ։
ց Հռ . 12 ։
ա Մատ . իբ . 37 . 39 . Յով . ժգ . 34 . ժե . 12 ։ Գլ . դ . 23 ։
ա Յով . ա . 12 ։
բ Գլ . բ . 22 . 23 ։ դ . 2 . 15 ։
գ Յով . ա . 13 ։
դ Յով . ժե . 23 ։
ե Յով . ժդ . 15 . 21 . 23 ։ ժե . 10 . բ Յով . 6 ։
զ Միք . զ . 8 ։ Մատ . ժա . 30 ։
է Յով . ժզ . 33 ։ Գլ . դ . 9 ։ դ . 4 ։
ը Ա Կոր . ժե . 57 . Գլ . դ . 15 ։
թ Յով . ժթ . 34 ։
ժ Յով . ժդ . 17 . ժե . 26 . ժզ . 13 . ա Տիմ . գ . 16 ։
ի Յով . ա . 1 ։ Յայտ . ժթ . 13 ։
լ Յով . ժ . 30 ։

Յամի Տեառն 90

խ Յով . ը . 17 . 18 ։
ծ Մատ . գ . 16 . 17 . ժէ . 5 ։
կ Հռով . ը . 16 . Գաղ . դ . 6 ։
հ Յով . գ . 33 . ե . 35 ։
ձ Գլ . բ . 25 ։
ղ Յով . ա . 4 ։ Գլ . դ . 9 ։
ճ Յով . գ . 36 . ե . 24 ։
մ Յով . ի . 31 ։
յ Գլ . ա . 1 . 2 ։
ն Գլ . գ . 22 ։
շ Մրկ . իա . 24 . Յակ . ե . 14 . 15 ։
ո Մատ . ժբ . 31 . 32 ։ Մար . գ . 29 ։ Ղուկ . ժբ . 10 ։ Եբր . զ . 4 . 6 . ժ . 26 ։
չ Երեմ . է . 16 ։ ժդ . 11 ։ Յով . ժէ . 9 ։
պ Գլ . գ . 4 ։
ջ Գաղատ . ա . 23 ։ Գլ . դ . 9 ։
ռ Յակ . ա . 27 ։
ս Գաղ . ա . 4 ։
վ Ղուկ . իդ . 45 ։
տ Յով . ժէ . 3 ։
ր Ես . թ . 6 . խդ . 6 . ծդ . 5 . Յով . ի . 28 . Գործ . ի . 28 . Հռով . թ . 5 . ա Տիմ . գ . 16 . Տիտ . բ . 13 . Եբր . ա . 8 ։
ց Հռ . 11 . 12 . 13
ւ Ա Կոր . ժ . 14 ։

## ԵՐԿՐՈՐԴ ԹՈՒՂԹ

# ՅՈՎՀԱՆՆՈՒ ԱՌԱՔԵԼՈՅՆ

Յամի Տեառն 90

1 Կը յորդորէ մէկ պատուաւոր քրիստոնեայ տիկին մը՝ որ իր որդիներովը մէկտեղ հաստատուն մնայ քրիստոնէական սիրոյն և հաւատքին մէջ, 8 որ զգոյշ ըլլայ թէ իրենց աշխատութեանը վարձքը կորսնցընեն. 10 պատուէր կու տայ չընդունիլ ան մոլորեցուցիչները, որոնք Յիսուս Քրիստոսի ճշմարիտ վարդապետութիւնը չունին։

1 Երէցէն ընտրեալ Տիկնոջը՝ ու իր
որդիներուն, ա որ ես ճշմար-
տութեամբ կը սիրեմ, (և չէ թէ
մինակ ես, հապա ամէնքն ալ՝ բ որ
ճշմարտութիւնը կը ճանչնան,)
2 Ան ճշմարտութեանը համար՝ որ մեր
մէջը կը մնայ, ու յաւիտեան մեր
3 հետը պիտի ըլլայ. գ Շնորհք՝ ո-
ղորմութիւն՝ խաղաղութիւն Հայր
Աստուծմէն, և Տէր Յիսուս Քը-
րիստոսէն Հօրը Որդիէն՝ ձեր հետը
ըլլայ դ ճշմարտութիւնով ու սի-
րով։
4 Շատ ուրախ եղայ ես, որ քու
որդիներէդ գտայ՝ ե որ ճշմարտու-
թեամբ կը քալեն ան պատուիրան-
քին համեմատ, որ Հօրմէն առինք։
5 Եւ հիմա քեզի կ'աղաչեմ՝ ով Տի-
կին, ոչ զ իբր թէ նոր պատուիրանք
մը քեզի կը գրեմ, հապա ան որ
սկիզբէն ունէինք, է որ մէկզմէկ սի-
6 րենք։ ը Եւ սէրը աս է՝ որ անոր
պատուիրանքներուն համեմատ քա-
լենք. թ Աս պատուիրանքը աս է՝ ժ որ
ինչպէս սկիզբէն 'ի վեր լսեցիք,
7 անոր համեմատ քալէք։ ժա Ինչու որ
շատ մոլորեցուցիչներ ելան աշխար-
հիս մէջ, ժբ որոնք Յիսուս Քրիստոսը
մարմինով եկած չեն խոստովանիր.
ժգ անանկ մէկը մոլորեցուցիչ ու Նեռ
8 է։ Զգուշացէք ձեր անձերուն,
որ ժդ աշխատանքնիս չկորսնցընենք,
9 հապա որ լման վարձք առնենք։ ժե Ա-
մէն ով որ յանցանք կը գործէ ու
Քրիստոսի վարդապետութեանը
մէջ չկենար, անիկայ Աստուած
չունի. ան որ Քրիստոսի վարդա-
պետութեանը մէջ կը կենայ, ա-
նիկայ Հայրն ալ ունի՝ Որդին ալ։
10 Թէ որ մէկը ձեզի գայ՝ ու աս վար-
դապետութիւնը չբերէ, անիկայ
տուներնիդ մի՛ ընդունիք, ժզ և անոր
11 Բարև մի՛ ըսէք։ Քանզի ով որ
անոր Բարև կ'ըսէ, անոր չար
գործքերուն հաղորդ կ'ըլլայ։
12 ժէ Շատ բան ունէի ձեզի գրելու,
բայց չուզեցի թղթով ու մելանով
գրել. ինչու որ յոյս ունիմ որ ձեզի
գամ, ու բերան առ բերան խօսիմ,
ժը որ մեր ուրախութիւնը կատարեալ
13 ըլլայ։ ժթ Բարև կ'ընեն քեզի՝ քու
ընտրեալ քրոջդ որդիքը։

ա Ա Յոհ. գ. 18. բ Բ Յոհ. 1. Հմր 3. գ Յոհ. ը. 32. Գաղ. բ. 5. 14. դ. 1. ե. 7. Կող. ա. 5. բ Թես. բ. 12. ա Տիմ. բ. 4. Եբր. ժա. 26. դ Ա Տիմ. ա. 2. ե Հմր 1. զ Գ Յոհ. 3. է Ա Յոհ. բ. 7. 8. դ. 11. ը Յոհ. ժգ. 34. ժե. 12. Եփե. ե. 2. ա Պետ. դ. 8. ա Յոհ. գ. 23. թ Յոհ. ժդ. 15. 21. ժե. 10. Ա Յոհ. բ. 5. ե. 3.

Յամի Տեառն 90

ժ Ա Յոհ. բ. 24. ժա Յոհ. դ. 1. ժբ Յոհ. դ. 2. 3. ժգ Յոհ. բ. 22. դ. 3. ժդ Գաղ. գ. 4. Եբր. ժ. 32. 35. ժե Յոհ. բ. 23.

ժզ Հռով. ժզ. 17. Ա Կոր. ե. 11. ժգ. 22. Գաղ. ա. 8. 9. Բ Տիմ. գ. 5. Տիտ. գ. 10. ժէ Գ Յոհ. 13. ժը Յոհ. ժե. 13. Ա Յոհ. ա. 4. ժթ Ա Պետ. ե. 13.

## ԵՐՐՈՐԴ ԹՈՒՂԹ

# ՅՈՎՀԱՆՆՈՒ ԱՌԱՔԵԼՈՅՆ

Յամի Տեառն 90

1 Առաքեալը կը գովէ Գայիոսի բարեպաշտութիւնը, 5 և հիւրասիրութիւնը, 7 որով ճըշմարիտ քարոզիչները կը պատուէր. 9 կը գանգատի Դիոտրեփեսին անվայել վարմունքին և անափառութեանը համար. 11 որուն չար օրինակէն զգուշանալու պատուէր կու տայ. 12 մասնաւոր վկայութիւն մը կ'ընէ Դեմետրիոսին բարի համբաւին վրայով։

1 Երէցէն Գայիոս սիրելիին, ա որն
որ ես կը սիրեմ ճշմարտու-
2 թեամբ։ Սիրելի՝ աղօթք կ'ընեմ որ
ամէն կողմէ յաջողութեան մէջ ու
առողջ ըլլաս, ինչպէս որ քու հո-
գիդ ալ յաջողութեան մէջ է։
3 Ինչու որ շատ ուրախացայ, երբոր
քանի մը եղբայրներ եկան, ու քու
ճշմարտութեանդ վրայով վկայե-
ցին, բ ինչպէս որ դուն ճշմարտու-
4 թեամբ կը քալես։ Ասկէ մեծ ու-
րախութիւն մը չունիմ, գ որ կը
լսեմ թէ իմ որդիներս ճշմարտու-
5 թեան մէջ կը քալեն։ Սիրելի՛
դուն հաւատարմաբար կ'ընես, ինչ

ա Բ Յոհ. 1.

Յամի Տեառն 90

բ Բ Յոհ. 4.

գ Ա Կոր. դ. 15. Փիլմ. 10.

Յամի Տեառն 90

որ կ՚ընես եղբայրներուն՝ և օտար-
6 ներուն ․ Որոնք եկեղեցիին առջևը
վկայեցին քու սիրոյդ վրայով ․ որ
եթէ աստուածահաճոյ կերպով
զանոնք ճամբայ դնես , աղէկ պիտի
7 ընես ։ Ինչու որ Աստուծոյ անուա-
նը համար ելան , ու հեթանոսնե-
8 րէն բան մը չեն առներ ։ Ուստի
մենք պարտաւոր ենք անանկները
ընդունելու , որ ճշմարտութեանը
գործակից ըլլանք ։
9 Եկեղեցիին գրեցի ․ բայց Դիոտ-
րեփէս՝ որ մէջերնին առաջին ըլլալ
10 կ՚ուզէ , մեզ չընդունիր ։ Ասոր
համար՝ թէ որ գամ , անոր ըրած
գործքերը պիտի յիշեմ , որ մեզի
դէմ շաղակրատելով չարախօսու-
թիւն կ՚ընէ ․ և ասով ալ գոհ չե-
ղած՝ ինքը չընդունիր եղբայրները ,
ու անոնք որ կ՚ուզեն ընդունիլ՝
կ՚արգիլէ , ու եկեղեցիէն ալ կը
11 հանէ ։ Սիրելի՝ չարին նմանող
մի ըլլար , հապա բարիին ․ Ան որ
բարիք կը գործէ , Աստուծմէ է ․
բայց ան որ չարիք կը գործէ ,
անիկայ զԱստուած տեսած չէ ։
12 Դեմետրիոսին համար ամէնն ալ
կը վկայեն , նոյն իսկ ճշմարտու-
թիւնն ալ ․ մենք ալ կը վկայենք ․
և դուք գիտէք որ մեր վկայու-
թիւնը ճշմարիտ է ։
13 Շատ բան ունէի գրելու ․ բայց
չեմ ուզեր մելանով ու գրիչով
14 քեզի գրել ։ Սակայն յոյս ունիմ
մօտերս քեզ տեսնելու , ու բերան
15 առ բերան պիտի խօսինք ։ Խաղա-
ղութիւն քեզի ․ բարեկամները
քեզի բարև կ՚ընեն ․ բարև ըրէ մեր
բարեկամներուն՝ ամէն մէկուն ա-
նունովը ։

ա Կոր․ թ․ 12 , 15 ։

Յամի Տեառն 90

ա Սաղ․ լէ․ 27 ։ Եսա․ ա․ 16 , 17 ։ ա Պետ․ գ․ 11 ։ բ ա Յոհ․ բ․ 29 ։ գ․ 6 , 9 ։ ա Տիմ․ գ․ 7 ։ գ Յոհ․ իա․ 24 ։ ա բ Յոհ․ 12 ։

---

ԸՆԴՀԱՆՐԱԿԱՆ ԹՈՒՂԹ

# ՅՈՒԴԱՅԻ ԱՌԱՔԵԼՈՅՆ

Յամի Տեառն իրր 66

1 Առաքեալը կը յորդորէ քրիստոնեաները՝ որ հաստատ կենան հաւատքին դաւանութեանը մէջ , 4 ծանուցանելով անոնց թէ խաբեբայ վարդապետներ մտած են մէջերնին՝ որ զանոնք մոլորցընեն ․ որոնց դատապարտելի վարդապետութեանը ու վարմունքին համար՝ սոսկալի պատիժ պատրաստուած է ․ 20 իսկ բարեպաշտներուն վրայով կ՚իմացընէ թէ՝ անոնք Աստուծոյ աղօթք ընելով՝ Սուրբ Հոգիին օգնականութեամբը կրնան հաստատուն կենալ , շնորհօք աճիլ , անձերնին պահել և ուրիշներն ալ ազատել աս մոլորեցուցիչներուն որոգայթներէն ։

1 Յուդա՝ Յիսուս Քրիստոսի ծա-
ռայ ու Յակոբոսին եղբայրը ․
ձեզի՝ որ Հայր Աստուծմէն սըր-
բուած էք , և Յիսուս Քրիստոսէն
2 պահուած ու կանչուած ․ Ողոր-
մութիւնը ու խաղաղութիւնը և
սէրը ձեր վրայ շատնայ ։
3 Սիրելիներ՝ բոլոր ջանքը վրաս առ-
նելով ձեզի գրելու հասարակաց
փրկութեանը համար , ինծի
հարկ սեպեցի ձեզի գրել , ու յոր-
դորել , որ մըցիք ան հաւատքին
համար՝ որ անգամ մը սուրբերուն
4 աւանդուեցաւ ։ Քանզի մէկ քա-
նի մարդիկ գաղտուկ մտան ,
անոնք որ առաջուց աս դատա-
պարտութեանը համար որոշուած
էին , ամբարիշտներ , որ մեր
Աստուծոյ շնորհքը անառակու-
թեան դարձուցին , և մի միայն
Իշխանը՝ ու մեր Տէր Յիսուս Քը-
5 րիստոսը ուրացան ։ Արդ՝ կ՚ու-
զեմ միտքերնիդ բերել , թէև ար-
դէն գիտէք ասիկայ , թէ Տէրը
որ ժողովուրդը Եգիպտոսի երկրէն
ազատեց , ետքը չհաւատացողնե-
6 րը կորսընցուց ։ Եւ ան հրեշտակ-
ները՝ որ իրենց իշխանութիւնը չը-
պահեցին , հապա իրենց բնակու-
թիւնը ձգեցին , մշտնջենաւոր
կապերով խաւարի մէջ պահեց՝
7 մեծ օրուան դատաստանին ։ Ինչ-
պէս Սոդոմ ու Գոմոր՝ և անոնց բո-
լորտիքը եղած քաղաքները՝ որոնք
ասոնց նման պոռնկեցան ընկերնե-
րուն մարմինին ետևէն երթալով ,
առջևնիս օրինակ կեցեր են՝ յաւի-
տենական կրակին դատապարտու-
8 թիւնը ընդունելով ։ Նմանապէս
աս ցնորածներն ալ մարմինը կը
պղծեն , տէրութիւնը կ՚անարգեն ,
փառաւորներուն դէմ կը հայհո-
9 յեն ։ Բայց Միքայէլ հրեշտա-
կապետը երբոր Սատանային դէմ
դնելով՝ Մովսէսին մարմինին հա-
մար կը վիճէր , չհամարձակեցաւ
հայհոյութեան դատապարտու-
թիւն բերել անոր վրայ , հապա ը-
սաւ , Տէրը յանդիմանէ քեզ ։
10 Իսկ ասոնք՝ ան բաներուն որ չեն
հասկընար , հայհոյութիւն կ՚ընեն ․

ա Ղու․ զ․ 16 ։ Գոր․ ա․ 13 ։ բ Յոհ․ ժէ․ 11 , 12 , 15 ։ ա Պետ․ ա․ 5 ։ գ Հռով․ ա․ 7 ։ դ ա Պետ․ ա․ 2 ։ բ Պետ․ ա․ 2 ։ ե Տիտ․ ա․ 4 ։ զ Փիլ․ ա․ 27 ։ ա Տիմ․ ա․ 18 ։ զ․ 12 ։ բ Տիմ․ ա․ 13 ։ դ․ 7 ։ է Գաղ․ բ․ 4 ։ բ Պետ․ բ․ 1 ։ ը Հռով․ թ․ 21 , 22 ։ ա Պետ․ բ․ 8 ։ թ Տիտ․ բ․ 11 ։ Եբր․ ժբ․ 15 ։ ժ բ Պետ․ բ․ 10 ։ ժա Տիտ․ ա․ 16 ։ բ Պետ․ բ․ 1 ։ ա Յոհ․ բ․ 22 ։

Յամի Տեառն իրր 66

ա ա Կոր․ ժ․ 9 ։ բ Թու․ ժդ․ 29 , 37 ։ իզ․ 64 ։ Սաղ․ ճզ․ 26 ։ Եբր․ գ․ 17 , 19 ։ գ Յոհ․ ը․ 44 ։ դ բ Պետ․ բ․ 4 ։ ե Յայտ․ ի․ 9 ։ զ Ծն․ ժթ․ 24 ։ բ Օր․ իթ․ 23 ։ բ Պետ․ բ․ 6 ։ է բ Պետ․ բ․ 10 ։ ը Ել․ իբ․ 28 ։ թ Դան․ ժ․ 13 ։ ժբ․ 1 ։ Յայտ․ ժբ․ 7 ։ ժ բ Պետ․ բ․ 11 ։ ժա Զաք․ գ․ 2 ։ ժբ բ Պետ․ բ․ 12 ։

Յամ. Տեառն
Իբր 66

ա Ծն. դ. 5 ։ ա Յօհ. գ. 12 ։
ւ Թու. իբ. 7, 21 ։ բ Պետ. բ. 15 ։
դ Թու. ժզ. 1, 31 ։
ե բ Պետ. բ. 13 ։
ա Կոր. ժա. 21 ։
ա Առակ. իե. 14 ։ բ Պետ. բ. 17 ։
Եփե. դ. 14 ։
ա Մատ. ժե. 13 ։
բ Ես. ծէ. 20 ։
ց Փիլ. գ. 19 ։
բ Պետ. բ. 17 ։
ծ Ծն. ե. 18 ։
ա բ Օր. լգ. 2 ։ Դան. է. 10 ։ Զաք. ժդ. 5 ։ Մատ. իե. 31 ։ բ Թես. ա. 7 ։ Յայտ. ա. 7 ։
ա Թագ. բ. 3 ։ Սաղ. լա. 18 ։ Ղդ. 4 ։ Մաղ. գ. 13 ։
ց բ Պետ. բ. 18 ։

և ան բաները որ բնականաբար
անբան անասուններու պէս գիտեն,
11 անոնց մէջ կ'ապականին ։ Վա՜յ
անոնց՝ որ Կայէնին ճամբովը գա-
ցին, Ու Բաղաամին մոլորութեա-
նը ցանկութեամբ վարձքի ե-
տևէ գացին. և Կորխին հակառա-
12 կութեանը կորսուեցան ։ Ա-
սոնք ձեր սիրոյ խնջոյքներուն մէջ
արատներ են, ու ձեզի հետ կերու-
խումի նստած առանց երկիւղ
իրենց անձը կը կերակրեն. ան-
ջուր ամպեր հովերէն քշուած.
պտուղնին կորսնցուցած ծառեր,
բերք չունեցող, երկու անգամ
13 մեռած, արմատէն խլուած. Ծո-
վու կատղած ալիքներ, որ իրենց
անձերուն ամօթը կը փրփրցնեն.
մոլորական աստղեր, որոնց հա-
մար խաւարին մէգը պահուած է
յաւիտեան ։
14 Անոնց վրայ մարգարէացաւ Ե-
նովք ալ՝ որ եօթներորդ էր Ադա-
մէն, ու ըսաւ. Ահա Տէրը իր
15 բիւրաւոր սուրբերովը եկաւ, Ամե-
նուն դատաստան ընելու, ու բոլոր
ամբարիշտները յանդիմանելու ի-
րենց ըրած ամբարշտութեանը բո-
լոր գործքերուն համար, և բոլոր
խիստ խօսքերուն համար՝ որ ամ-
բարիշտ մեղաւորները անոր դէմ
16 խօսեցան ։ Ասոնք տրտնջողներ ու
քրթմնջողներ են, որոնք իրենց
ցանկութիւններուն համեմատ կ'եր-
թան. և իրենց բերանները ամ-
բարտաւան խօսքեր կը զրուցեն.
և շահի համար երեսպաշտութիւն
17 կ'ընեն ։ Բայց դուք սիրելիներ՝
միտքերնիդ բերէք ան խօսքերը որ
մեր Տէր Յիսուս Քրիստոսի առա-
քեալներէն առաջուց զրուցուեցան.
18 Որ ձեզի կ'ըսէին թէ՝ Վերջի ժա-
մանակը ծաղր ընողներ պիտի ըլ-
լան, որոնք իրենց ամբարիշտ ցան-
կութիւններուն համեմատ պիտի
երթան ։
19 Ասոնք ինքզինքնին զատող շըն-
չաւորներ են, որ Հոգին չունին ։
20 Բայց դուք սիրելիներ՝ զանձերնիդ
շինելով ձեր ամենասուրբ հաւատ-
քին վրայ, և Սուրբ Հոգիով ա-
21 ղօթք ընելով, Անձերնիդ Աստու-
ծոյ սիրոյն մէջ պահեցէք, մեր
Տէր Յիսուս Քրիստոսի ողորմու-
թեանը սպասելով յաւիտենական
22 կենաց համար ։ Եւ խտրութիւն
23 ընելով՝ ոմանց ողորմեցէք. Եւ ո-
մանք վախով ազատեցէք՝ կրակէն
յափշտակելով զանոնք, ատելով
մարմինէն աղտոտուած հանդերձն
ալ ։
24 Եւ անոր՝ որ կարող է ձեզ ան-
բիծ պահել, և իր փառքին առ-
ջև անարատ կայնեցնել ցնծու-
25 թիւնով, Մի միայն Աստուծոյ
մեր Փրկչին՝ մեր Տէր Յիսուս Քրիս-
տոսին ձեռքովը փառք ու մեծու-
թիւն, զօրութիւն ու իշխանու-
թիւն *բոլոր դարերէն առաջ", և
հիմա ու բոլոր դարերու մէջ. ամէն ։

Յամ. Տեառն
Իբր 66

Հռով. իբ. 21 ։ Յակ. բ. 1, 9 ։
բ Պետ. գ. 2 ։
ա Տիմ. դ. 1 ։ բ Տիմ. գ. 1 ։ դ. 3 ։ բ Պետ. բ. 1 ։ գ. 3 ։
Առակ. ժը. 1 ։ Եզեկ. ժդ. 7 ։ Ովս. դ. 14 ։ Թ. 10 ։ Երր. ժ. 25 ։
ա Կոր. բ. 14 ։ Յակ. գ. 15 ։
Կող. բ. 7 ։ ա Տիմ. ա. 4 ։
Հռով. ը. 26 ։ Եփե. զ. 18 ։
Տիտ. բ. 13 ։ բ Պետ. գ. 12, 13 ։
Հռով. ժա. 14 ։ ա Տիմ. դ. 16 ։
Ամով. դ. 11 ։ ա Կոր. դ. 15 ։ Զաք. գ. 2 ։
Զաք. գ. 4, 5 ։ Յայտ. գ. 4 ։
Հռով. ժզ. 25 ։ Եփե. գ. 20 ։
Կող. ա. 22 ։
Հռով. ժզ. 27 ։ ա Տիմ. ա. 17 ։ բ. 3 ։
* Ոմանք չունին ։

ՅԱՅՏՆՈՒԹԻՒՆ

# ՅՈՎՀԱՆՆՈՒ ԱՌԱՔԵԼՈՅՆ

## ԻՒ ԱՍՏՈՒԱԾԱԲԱՆ ԱՒԵՏԱՐԱՆՉԻՆ

Յամփ Ցետուն
96

### ԳԼՈՒԽ Ա

4 Յովհաննէս իրեն եղած յայտնութիւնը կը գրէ Ասիայի եօթը եկեղեցիներուն . որոնց նշան ըլլալու համար ցուցուեցաւ իրեն՝ եօթը ոսկեղէն աշտանակները ։ 7 Քրիստոսի գալուստը . 14 ու անոր զօրութիւնը և մեծափառութիւնը ։

1 Յիսուս Քրիստոսի յայտնութիւ-
նը, որ Աստուած անոր տուաւ
իր ծառաներուն ցուցընելու ինչ որ
շուտով պէտք է ըլլալ . և իր
հրեշտակին ձեռքովը խրկելով՝ իր
Յովհաննէս ծառային իմացուց ,
2 Որ Աստուծոյ խօսքին վկայութիւ-
նը բրաւ , ու Յիսուս Քրիստոսի
վկայութիւնը , ինչ որ տեսաւ ։
3 Երանի անոր՝ որ կը կարդայ . ու
անոնց՝ որ կը լսեն մարգարէու-
թեանս խօսքերը , և կը պահեն ինչ
որ անոր մէջը գրուած է . ինչու
որ ժամանակը մօտ է ։
4 Յովհաննէսէն եօթը եկեղեցինե-
րուն՝ որ Ասիայի մէջն են . շնորհք
և խաղաղութիւն ձեզի Անկէ՝ որ
է . և որ էր . և որ պիտի գայ , ու
եօթը Հոգիներէն՝ որ անոր աթո-
5 ռին առջևն են ։ Եւ Յիսուս Քրիս-
տոս էհաւատարիմ վկայէն , որ
մեռելներուն անդրանիկն է . ու
երկրի թագաւորներուն իշխանը
անոր՝ որ մեզ սիրեց ու մեզ իր
արիւնովը մեր մեղքերէն լուաց
6 Եւ մեզ թագաւորներ ու քահա-
նաներ ըրաւ Աստուծոյ ու իր
Հօրը , անոր փառք և զօրութիւն
յաւիտեանս յաւիտենից ամէն ։
7 Ահա ամպերով կու գայ . ու ա-
մէն աչք պիտի տեսնէ անիկայ . և
անոնք որ զանիկայ խոցեցին . և ա-
նոր վրայ կոծ պիտի ընեն երկրիս
8 բոլոր ազգերը . այո . ամէն ։ Ես
եմ Ալֆա և Օմեղա՝ կ'ըսէ Տէր
Աստուած , որ է , և որ էր , և որ
պիտի գայ՝ Ամենակալը ։
9 Ես Յովհաննէս ձեր եղբայրը՝ և
Յիսուս Քրիստոսի նեղութեանը
ու արքայութեանը և համբերու-
թեանը մէջ ընկերակիցը , Պատ-
մոս ըսուած կղզին էի , Աստուծոյ
խօսքին համար՝ ու Յիսուս Քրիս-
10 տոսի վկայութեանը համար ։ Եւ
կիրակի օրը Հոգին իմ վրաս
եկաւ , ու ետևէս մեծ ձայն մը
լսեցի փողի ձայնի պէս , որ կ'ըսէր .
11 Ինչ որ կը տեսնես՝ գիրքի մը մէջ
գրէ , ու խրկէ եօթը եկեղեցինե-
րուն , որ Եփեսոսի , ու Զմիւռնիայի ,
և Պերգամոնի , ու Թիւատիրի , և
Սարդիկէի , ու Փիղադելփիայի , և
12 Լաւոդիկիայի մէջ են ։ Եւ դար-
ձայ այն ձայնը տեսնելու՝ որ ինծի կը
խօսէր . ու երբոր դարձայ՝ եօթը
13 ոսկեղէն աշտանակներ տեսայ . Եւ
եօթը աշտանակներուն մէջ մէկը
Որդւոյ մարդոյ նման՝ պճղնաւոր
պատմուճան մը հագած , ու
կուրծքին վրայ ոսկի գօտի մը կա-
14 պած ։ Եւ իր գլուխը ու մազերը՝
բուրդի պէս ճերմակ՝ ձիւնի
պէս . ու իր աչքերը՝ կրակի բոցի
15 պէս ։ Եւ իր ոտքերը ոսկեպղինձի
նման՝ որպէս թէ հնոցի մէջ կրակ
դարձած . ու իր ձայնը շատ ջուրե-
16 րու ձայնի պէս . Եւ իր աջ ձեռ-
քին մէջ եօթը աստղ ունէր , ու
իր բերնէն սրած երկսայրի սուր մը
կ'ելլէր . և իր երեսը արևու պէս
էր՝ որ իր զօրութեամբը կը փայլէ ։
17 Ու երբոր տեսայ անիկայ , իր
ոտքը ինկայ մեռելի պէս . ու իր
աջ ձեռքը իմ վրաս դրաւ ըսե-
լով . Մի վախնար . Ես եմ առա-
18 ջինը ու վերջինը ։ Եւ ես կենդանի
եմ , ու ես այն եմ որ մեռայ , և
ահա կենդանի եմ յաւիտեանս յա-
ւիտենից . և ես ունիմ մահուան
19 ու դժոխքին բանալիները ։ Ուս-
տի գրէ ինչ որ կը տեսնես , և ան
որ կայ . ու ան որ ետքը պիտի ըլ-
20 լայ . Եօթը աստղերուն խորհուր-
դը՝ որ իմ աջ ձեռքիս մէջը տեսար ,
և եօթը ոսկեղէն աշտանակները .

30 · Եփ · 64 · Գոր ա 11 · Զաք · ժբ 10 · Յօհ ժթ 37 · Ես խա · 4 · խդ · 6 · խը · 12 · Հմր 17 · Գլ բ · 8 · խա 6 · իբ 13 · Հմր 4 · Գլ · դ 8 · ժա 17 · ժզ 5 · Հռով ր 17 · Տիմ · բ · 12 ·

13 · Գլ · ժ · 1 · Եզեկ · ա · 28 · Դան · ը · 15 · ժ · 10 · Ես խա · 4 · խդ · 6 · խը · 12 · Գլ բ · 8 · իբ · 13 · Հմր 10 · Հռով · զ · 9 · Գլ · դ · 9 · ե · 14 · Սաղ · կը · 20 · Գլ ի 1 · Հմր 12 · Գլ · բ · 1 · Գլ · դ · 1 · Հմր 16 · Հմր 12 ·

ան եօթը աստղերը՝ Ի եօթը եկեղե-
ցիներուն հրեշտակներն են . Ծ և եօ-
թը աշտանակները եօթը եկեղեցի-
ներն են ։

## ԳԼ. Բ

1 Եփեսոսի, 8 Զմիւռնիայի, 12 Պերգամոնի 18 և Թիւատիրի եկեղեցիներուն հրեշտակներուն՝ այսինքն հոգևոր պաշտօնեաներուն գրուելու պատուէրները, ու անոնց եկեղեցիներուն եղած գովութիւնները ու յանդիմանութիւնները ։

1 Եփեսոսի մէջ եղած եկեղեցիին
հրեշտակին գրէ . Ա Այսպէս կ'ը-
սէ անիկայ՝ որ իր աջ ձեռքին մէջ
եօթը աստղերը ունի , Բ ու եօթը
ոսկեղէն աշտանակներուն մէջը կը
2 պտըտի . Գ Գիտեմ քու գործքերդ ,
և քու աշխատութիւնդ , ու քու
համբերութիւնդ , և որ չարերուն
չես կրնար տանիլ , Դ ու փորձեցիր
անոնք Ե որ կ'ըսեն՝ թէ իրենք առա-
քեալ են , ու չեն , և գտար թէ
3 ստախօս են . Ու համբերութիւն
ունենալով՝ իմ անուանս համար
Զ նեղութիւն կրեցիր , Է ու չթուլցար ։
4 Բայց քեզի դէմ բան մը ունիմ , որ
5 քու առջի սէրդ ձգեցիր ։ Միտքդ
բեր հիմա ուսկից որ ինկար , ու ա-
պաշխարէ , և Ը առջի գործքերդ
ըրէ . Թ եթէ ոչ՝ շուտով կու գամ
քեզի , ու քու աշտանակդ իր տե-
ղէն պիտի շարժեմ՝ թէ որ չապաշ-
6 խարես ։ Բայց ասիկայ ունիս , որ
Ժ Նիկողայոսեանց գործքերը կ'ատես ,
7 որոնք ես ալ կ'ատեմ ։ Ի Ան որ ա-
կանջ ունի՝ թող լսէ թէ Հոգին
ինչ կ'ըսէ եկեղեցիներուն . Ան որ
կը յաղթէ՝ անոր Լ ուտել պիտի
տամ Խ կենաց ծառէն , որ իմ Ա-
տուծոյս դրախտին մէջն է ։
8 Եւ Զմիւռնիայի մէջ եղած եկե-
ղեցիին հրեշտակին գրէ . Այսպէս
կ'ըսէ Ծ Առաջինը ու վերջինը , որ
9 մեռաւ ու կենդանացաւ . Կ Գիտեմ
քու գործքերդ ու նեղութիւնդ՝ և
աղքատութիւնդ , (Հ բայց հարուստ
ես , ) ու անոնց հայհոյութիւնը՝ Ձ որ
կ'ըսեն , թէ իրենք Հրեայ են , ու
չեն , Ղ հապա Սատանայի ժողովք
10 մը ։ Ճ Բնաւ մի՛ վախնար այն բա-
ներէն որ պիտի կրես . ահա Բան-
սարկուն ձեզմէ Մ ոմանք բան-
տը պիտի ձգէ , որ փորձուիք , և
տասը օր նեղութիւն պիտի ունե-
նաք . Յ Մինչև 'ի մահ հաւատարիմ
եղիր , Ն ու քեզի կենաց պսակը պի-
11 տի տամ ։ Շ Ան որ ականջ ունի՝
թող լսէ թէ Հոգին ինչ կ'ըսէ
եկեղեցիներուն . Ան որ կը յաղթէ՝
Ո երկրորդ մահէն պիտի չվնասուի ։
12 Եւ Պերգամոնի մէջ եղած եկե-
ղեցիին հրեշտակին գրէ . Չ Այսպէս
կ'ըսէ անիկայ՝ որ սրած երկբերան
13 սուրը ունի . Պ Գիտեմ քու գործ-
քերդ , և թէ ուր կը բնակիս՝ Ջ այս-
ինքն Սատանային աթոռին եղած
տեղը , ու իմ անունս կը պահես ,
և իմ հաւատքս չուրացար այն օ-
րերը անգամ՝ որ Անթիպաս իմ
հաւատարիմ վկաս սպաննուեցաւ
ձեր մէջը , ուր որ Սատանան կը
14 բնակի ։ Բայց քեզի դէմ քիչ մը
բան ունիմ . որ հոն Ռ Բաղաամին
վարդապետութիւնը բռնողներ ու-
նիս , որ Բաղակին սորվեցուց Իսրա-
յէլի որդւոց առջևը գայթակղու-
թիւն դնել , Ս որ անոնք կռոց զո-
հուածներ ուտեն՝ Վ ու պոռնկու-
15 թիւն ընեն ։ Տ Ասանկ ալ դուն Նի-
կողայոսեանց վարդապետութիւնը
բռնողներ ունիս , որն որ ես կ'ա-
16 տեմ ։ Ուստի ապաշխարէ . եթէ
ոչ՝ շուտով կու գամ քեզի , Ր ու իմ
բերնիս սրովը պիտի պատերազմիմ
17 անոնց հետ ։ Ց Ան որ ականջ ունի՝
թող լսէ թէ Հոգին ինչ կ'ըսէ
եկեղեցիներուն . Ո՛վ որ կը յաղ-
թէ՝ պահուած մանանայէն ուտել
պիտի տամ անոր , ու ճերմակ խիճ
մը պիտի տամ անոր , և այն խիճին
վրայ Ւ նոր անուն մը գրուած , որն
որ մէկը չգիտեր , բայց միայն ան՝
որ կ'ընդունի ։
18 Եւ Թիւատիրի մէջ եղած եկե-
ղեցիին հրեշտակին գրէ . Այսպէս
կ'ըսէ Աստուծոյ Որդին , Փ որ կրակի
բոցի պէս աչքեր ունի , ու իր ոտ-
19 քերը ոսկեպղինձի նման են . Ք Գի-
տեմ քու գործքերդ , և սէրդ՝ ու
հաւատքդ՝ ու քու ծառայութիւնդ
ու համբերութիւնդ , և թէ քու
վերջին գործքերդ առջիններէն շատ
20 են ։ Բայց քեզի դէմ բան մը ու-
նիմ , որ թող կու տաս Ա Յեզաբել
կնոջ , որ ինքզինքը մարգարէուհի
կ'անուանէ , ու իմ ծառաներս մո-
լորցնելով՝ կը սորվեցնէ Բ պոռնը-
կութիւն ընել՝ և կռոց զոհուածներ
21 ուտել ։ Գ Եւ ես անոր ժամանակ
տուի իր պոռնկութեանը վրայ ա-
պաշխարելու , ու չապաշխարեց ։
22 Ահա ես զանիկայ անկողինը պիտի
ձգեմ , ու անոր հետ շնութիւն
ընողները մեծ նեղութեան մէջ ,
թէ որ իրենց գործքերուն վրայ չա-
23 պաշխարեն ։ Եւ անոր զաւակնե-
րը մահով պիտի սպաննեմ . ու
բոլոր եկեղեցիները պիտի գիտնան
Դ թէ ես այն եմ՝ որ երիկամունքնե-
րը ու սիրտերը կը քննեմ . Ե և ամէն
մէկերնուդ ձեր գործքերուն համե-
24 մատ պիտի հատուցանեմ ։ Բայց
ձեզի կ'ըսեմ միւսներուդ՝ որ Թի-
ւատիրի մէջ էք , ու աս վարդա-
պետութիւնը չունիք , որ չճանչ-
ցաք Սատանային խորունկ բաները՝
( ինչպէս որ կ'ըսեն . ) Զ Ձեր վրայ

Ցամի Տեառն 96

Ի Մաղ. Բ. 7։ Գլ. Բ. 1։ Ե.։
Ծ Զաք. Դ. 2։ Մատ. Ե. 15։ Փիլ. Բ. 15։
Ա Գլ. Ա. 16. 20։
Բ Գլ. Ա. 13։
Գ Սաղ. Ա. 6։ Հմր 9, 13, 19։ Գլ. Գ. 1, 8, 15։
Դ Ա Յօհ. Դ. 1։
Ե Բ Կոր. ԺԱ. 13։ Բ Պետ. Բ. 1։
Զ Գաղ. Զ. 9։ Եբր. ԺԲ. 3, 5։
Թ Մատ. ԻԱ. 41, 43։
Ժ Հմր 15։
Ի Մատ. ԺԱ. 15։ ԺԳ. 9. 43։ Հմր 11. 17։ 29։ Գլ. Գ. 6, 13, 22։ ԺԳ. 9։
Լ Գլ. ԻԲ. 2, 14։
Խ Ծն. Բ. 9։
Ծ Գլ. Ա. 17, 18։
Կ Հմր 2։
Հ Ղուկ. ԺԲ. 21։ Ա Տիմ. Զ. 18։ Յակ. Բ. 5։
Ձ Հռով. Բ. 17, 23, 29։ Թ. 6։
Ղ Գլ. Գ. 9։
Յ Մատ. Ժ. 22։
Ղ Մատ. ԻԴ. 13։
Ն Յակ. Ա. 12։ Գլ. Գ. 11։
Շ Հմր 7։ Գլ. ԺԳ. 9։
Ո Գլ. Ի. 14։ ԻԱ. 8։
Չ Գլ. Ա. 16։
Պ Հմր 2։

Ցամի Տեառն 96

Ջ Հմր 9։
Ռ Թուոց ԻԴ. 14։ ԻԵ. 1։ ԼԱ. 16։ Բ Պետ. Բ. 15։ Յուդ. 11։
Ս Հմր 20։ Գործ. ԺԵ. 29։ Ա Կոր. Ը. 9, 10։ Ժ. 19, 20։
Վ Ա Կոր. Զ. 13. ։
Տ Հմր 6։
Ր Ես. ԺԱ. 4։ Բ Թես. Բ. 8։ Գլ. Ա. 16։ ԺԹ. 15, 21։
Ց Հմր 7, 11։
Ւ Գլ. Գ. 12։ ԺԹ. 12։
Փ Գլ. Ա. 14, 15։
Ք Հմր 2։
Ա Գ Թագ. ԺԶ. 31։ ԻԱ. 25։ Դ Թագ. Թ. 7։
Բ Եզ. ԼԴ. 15։ Գործ. ԺԵ. 20, 29։ Ա Կոր. Ժ. 19, 20։ Հմր 14։
Գ Հռով. Բ. 4։ Գլ. Թ. 20։
Դ Ա Թագ. ԺԶ. 7։ Ա Մն. ԻԸ. 9։ ԻԹ. 17։ Բ Մն. Զ. 30։ Սաղ. Է. 9։ Երեմ. ԺԱ. 20։ ԺԷ. 10։ Ի. 12։ Յօհ. Բ. 24, 25։ Գործ. Ա. 24։ Հռով. Ը. 27։
Ե Սաղ. ԿԲ. 12։ Մատ. ԺԶ. 27։ Հռով. Բ. 6։ ԺԴ. 12։ Բ Կոր. Ե. 10։ Գաղ. Զ. 5։ Գլ. Ի. 12։
Զ Գործ. ԺԵ. 28։

Յու. ե. Ղուկ.

93

Բ Գղ. Յ. 11 ։ Գ Յոհ. գ. 29 ։ ա Յոհ. գ. 23 ։ Դ Սաղ. ժթ. 28 ։ Ղու. իբ. 29, 30 ։ ա Կոր. զ. 3 ։ Գլ. գ. 21 ։ ի. 4 ։ Ե Սաղ. բ. 8, 9 ։ Եսթ. 14 ։ Դան. է. 22 ։ Գլ. ժբ. 5 ։ ժթ. 15 ։ Զ Բ Պետ. ա. 19 ։ Գլ. իբ. 16 ։ Է Հմր. 7 ։

Ա Գլ. ա. 4 ։ 16 ։ գ. 5 ։ ե. 6 ։ Բ Գլ. բ. 2 ։ Գ Եփե. բ. 1, 5 ։ ա Տիմ. ե. 6 ։ Դ ա Տիմ. զ. 20 ։ բ Տիմ. ա. 13 ։ Հմր. 11 ։ Ե Հմր. 19 ։ Զ Մատ. իդ. 42, 43 ։ իե. 13 ։ Մար. ժգ. 33 ։ Ղու. ժբ. 39, 40 ։ ա Թես. ե. 2, 6 ։ բ Պետ. գ. 10 ։ Գլ. ժզ. 15 ։ Է Յուդ. 23 ։ Ը Գլ. դ. 4 ։ զ. 11 ։ է. 9. 13 ։ Թ Գլ. ժթ. 8 ։ Ժ Ել. լբ. 32 ։ Սաղ. կթ. 28 ։ ԺԱ Փիլ. դ. 3 ։ Գլ. ժզ. 8 ։ ժէ. 8 ։ ի. 12 ։ իա. 27 ։ ԺԲ Մատ. ժ. 32 ։ Ղու. ժբ. 8 ։ ԺԳ Գլ. բ. 7 ։ ԺԴ Գոր. գ. 14 ։ ԺԵ ա Յոհ. ե. 20 ։ Հմր. 14 ։ Գլ. ա. 5 ։ զ. 10 ։ ժթ. 11 ։ ԺԶ Ես. իբ. 22 ։ Ղու. ա. 32 ։ Գլ. ա. 18 ։ ԺԷ Մատ. ժզ. 19 ։ ԺԸ Յոբ. ժբ. 14 ։ ԺԹ Հմր. 1 ։ Ի ա Կոր. ժզ. 9 ։ բ Կոր. բ. 12 ։

ուրիշ ծանրութիւն չեմ ձգեր .
25 Բ Հապա ան որ ունիք՝ պահեցէք
26 մինչև որ ես գամ ։ Եւ ան որ կը
յաղթէ՝ Գ ու իմ գործքերս մինչև
վերջը կը պահէ , Դ անոր իշխանու-
թիւն պիտի տամ ազգերուն վրայ .
27 (Ե Եւ պիտի հովուէ զանոնք եր-
կաթէ գաւազանով . անոնք բրու-
տի ամաններու պէս պիտի փշր-
28 ուին .) Ինչպէս որ ես ալ իմ Հօր-
մէս առի . ու անոր պիտի տամ
29 Զ առաւօտեան աստղը ։ Է Ան որ
ականջ ունի՝ թող լսէ թէ Հոգին
ինչ կ'ըսէ եկեղեցիներուն ։

ԳԼ . Գ

2 Քրիստոս կը յանդիմանէ Սարդիկէի եկեղեցիին հրեշտակը . 3 կը յորդորէ զանիկայ որ ապաշխարէ , և սպառնալիք կ'ընէ անոր . 8 կը գովէ Փիղադեղփիայի եկեղեցիին հրեշտակը 10 իր արթնութեանը և համբերութեանը համար . 15 կը նախատէ Լաւոդիկէի եկեղեցիին հրեշտակը՝ ո՛չ պաղ և ո՛չ տաք ըլլալուն համար , 19 և կը պատուիրէ որ աւելի նախանձաւոր ու ջերմեռանդ ըլլայ ։ 20 Քրիստոս դուռը կայնած կը բաղխէ ։

1 Ու Սարդիկէի մէջ եղած եկեղե-
ցիին հրեշտակին գրէ , Ա Այսպէս
կ'ըսէ անիկայ՝ որ ունի Աստուծոյ
եօթը Հոգիները՝ ու եօթը աստ-
ղերը . Բ Գիտեմ քու գործքերդ՝
որ դուն անուն ունիս թէ կենդա-
2 նի ես , Գ ու մեռած ես ։ Արթուն
կեցիր՝ և հաստատէ մնացած բա-
ները որ մեռնելու վրայ են , ինչու
որ քու գործքերդ Աստուծոյ առ-
3 ջևը կատարեալ չգտայ ։ Դ Հիմա
միտքդ բեր թէ ինչպէս ընդունե-
ցիր ու լսեցիր , ու պահէ , Ե և ա-
պաշխարէ . Զ Բայց թէ որ արթըն-
նալու չըլլաս , գողի պէս քու վրադ
պիտի գամ , ու բնաւ պիտի չգիտ-
նաս թէ որ ժամուն քու վրադ
4 պիտի գամ ։ Է Սակայն քանի մը
անձինք ունիս Սարդիկէի մէջ ,
Ը որոնք իրենց հանդերձները չաղ-
տոտեցին , Թ և ճերմակներով պիտի
պտըտին ինծի հետ , քանզի ար-
5 ժանի են ։ Ան որ կը յաղթէ՝
Ժ ճերմակներ պիտի հագնի . ԺԱ ու ես
անոր անունը ԺԲ կենաց գիրքէն պիտի
չաւրեմ , ԺԳ և անոր անունը պիտի
դաւանիմ իմ Հօրս առջևը՝ ու ա-
6 նոր հրեշտակներուն առջևը ։ ԺԴ Ան
որ ականջ ունի՝ թող լսէ՝ թէ՝
Հոգին ինչ կ'ըսէ եկեղեցիներուն ։
7 Եւ Փիղադեղփիայի մէջ եղած ե-
կեղեցիին հրեշտակին գրէ . ԺԵ Այս-
պէս կ'ըսէ ան Սուրբը՝ ԺԶ ան Ճշմա-
րիտը՝ ԺԷ որ Դաւիթի բանալին ունի ,
ԺԸ կը բանայ՝ ու մէկը չկայ որ գոցէ ,
ԺԹ և կը գոցէ՝ ու մէկը չկայ որ բանայ .
8 Ի Գիտեմ քու գործքերդ . ԻԱ Ահա
քու առջևդ բացուած դուռ մը
դրի , որ մէկը չկրնար գոցել . ինչու

որ դուն քիչ մը կարողութիւն ու-
նիս , և իմ խօսքս պահեցիր , ու իմ
9 անունս չուրացար ։ ԻԲ Ահա ես քե-
զի կու տամ Սատանային ժողով-
քէն եղողները՝ որոնք կ'ըսեն թէ՝
իրենք Հրեայ են , ու չեն , հապա
սուտ կ'ըսեն . ԻԳ Ահա պիտի ստիպեմ
անոնք՝ որ գան ու երկրպագու-
թիւն ընեն քու ոտքերուդ առջևը ,
և ճանչնան՝ թէ ես քեզ սիրեցի ։
10 Որովհետև իմ համբերութեանս
խօսքը պահեցիր , ԻԴ ես ալ քեզ պի-
տի պահեմ փորձութեան ժամա-
նակը , ԻԵ որ պատրաստ է գալու բո-
լոր աշխարհի վրայ՝ ԻԶ երկրիս երեսը
բնակողները փորձելու համար ։
11 ԻԷ Ահա ես շուտով կու գամ . Զու-
նեցածդ ԻԸ ամուր բռնէ , ԻԹ որ մէկը
12 չառնէ քու պսակդ ։ Ան որ կը
յաղթէ՝ անիկայ իմ Աստուծոյս
տաճարին մէջ Լ սիւն մը պիտի ը-
նեմ , ու ալ դուրս պիտի չելլէ . ԼԱ և
անոր վրայ իմ Աստուծոյս անունը
պիտի գրեմ , ու իմ Աստուծոյս
քաղաքին անունը , ԼԲ այսինքն Նոր
Երուսաղեմին , որ երկինքէն իմ
Աստուծմէս կ'իջնէ , ԼԳ և իմ Նոր ա-
13 նունս . ԼԴ Ան որ ականջ ունի՝
թող լսէ թէ Հոգին ինչ կ'ըսէ
եկեղեցիներուն ։
14 Եւ Լաւոդիկէի մէջ եղած եկե-
ղեցիին հրեշտակին գրէ . ԼԵ Այսպէս
կ'ըսէ ԼԶ Ամէնը՝ ԼԷ հաւատարիմ ու
ճշմարիտ վկան , ԼԸ Աստուծոյ ա-
15 րարածոց Սկիզբը . ԼԹ Գիտեմ քու
գործքերդ՝ որ ոչ պաղ ես , ու ոչ
տաք . երանի թէ պաղ ըլլայիր՝
16 կամ տաք ։ Ուստի դուն որ գաղջ
ես , ու ո՛չ տաք՝ ո՛չ ալ պաղ ,
քեզ բերնէս դուրս փսխելու վրայ
17 եմ . Քանզի կ'ըսես , Խ Ես հարուստ
եմ՝ ու մեծցայ , և բանի մը կարօտ
չեմ . ու չես գիտեր՝ որ դուն
խեղճ ու թշուառական ես՝ և
18 աղքատ ու կոյր ու մերկ ։ Ես
քեզի խորհուրդ կու տամ , ԽԱ ինծմէ
կրակի մէջ փորձուած ոսկի ծախու
առ՝ որ հարստանաս , ԽԲ ու ճերմակ
հանդերձներ՝ որ հագնիս , որ քու
ամօթալի մերկութիւնդ չերևնայ .
և աչքերդ դեղ դիր՝ որ տեսնես ։
19 ԽԳ Ես իմ ամէն սիրածս կը յանդի-
մանեմ ու կը խրատեմ . ուստի
նախանձաւոր եղիր ու ապաշխա-
20 րէ ։ ԽԴ Ահա ես դուռը կայներ եմ
ու կը զարնեմ . ԽԵ Եթէ որ մէկը իմ
ձայնս լսէ , ու դուռը բանայ , ԽԶ ա-
նոր քովը պիտի մտնեմ , և անոր
հետը ընթրիք պիտի ընեմ , ան ալ
21 իմ հետս . Ան որ կը յաղթէ ,
ԽԷ իմ հետս իմ աթոռս նստել
պիտի տամ անոր ։ Ինչպէս որ ես
ալ յաղթեցի՝ ու իմ Հօրս հետ

Ընդհ. Տեղեկ.

96

ԻԱ Գլ. ե. 9 ։ ԻԲ Ես. կթ. 23 ։ կ. 14 ։ ԻԳ Բ Պետ. բ. 9 ։ ԻԴ Ղու. բ. 1 ։ ԻԵ Ես. իգ. 17 ։ ԻԶ Փիլ. դ. 5 ։ Գլ. ա. 3 ։ իբ. 7, 12, 20 ։ ԻԷ Գլ. բ. 25 ։ ԻԸ Գլ. բ. 10 ։ ԻԹ Գաղ. ե. 21 ։ Գաղ. բ. 9 ։ Լ Գլ. բ. 17 ։ ժգ. 1 ։ իբ. 4 ։ ԼԱ Գաղ. դ. 26 ։ Եբր. ժբ. 22 ։ Գլ. իա. 2, 10 ։ ԼԲ Գլ. իբ. 4 ։ ԼԳ Գլ. բ. 7 ։ ԼԴ Ես. կե. 16 ։ ԼԵ Գլ. ա. 5 ։ ժթ. 11 ։ իբ. 6 ։ Հմր. 7 ։ ԼԶ Կող. ա. 15 ։ ԼԷ Հմր. 1 ։ ԼԸ Ովս. ժբ. 9 ։ ա Կոր. դ. 8 ։ ԼԹ Ես. ծե. 1 ։ Մատ. ժգ. 44 ։ իե. 9 ։ Խ բ Կոր. ե. 3 ։ Գլ. է. 13 ։ ժզ. 15 ։ ժթ. 8 ։ ԽԱ Յոբ. ե. 17 ։ Առակ. գ. 11, 12 ։ Եբր. ժբ. 5, 6 ։ Յակ. ա. 12 ։ ԽԲ Երգ. ե. 2 ։ ԽԳ Ղու. ժբ. 37 ։ ԽԴ Յոհ. ժդ. 23 ։ ԽԵ Մատ. ժթ. 28 ։ Ղու. իբ. 30 ։ ա Կոր. զ. 2 ։ բ Տիմ. բ. 12 ։ Գլ. բ. 26, 27 ։

Յամ Տեառն 96

22 անոր աթոռը նստայ ։ Ան որ
ականջ ունի՝ թող լսէ թէ Հո-
գին ինչ կ՚ըսէ եկեղեցիներուն ։

## ԳԼ. Դ

2 Յովհաննէս Աստուծոյ աթոռը կը տեսնէ երկինքին մէջ ։ 4 Քսանուչորս երէցները ։ 6 Չորս կենդանիները՝ որոնք առջեւնուն ու ետեւնուն աչքերով լեցուն էին ։ 10 Երէցները՝ իրենց պսակները աթոռին վրայ Նստողին առջեւ դնելով, երկրպագութիւն կ՚ընեն անոր ։

1 Ասկէ ետքը տեսայ, և ահա
երկինքի մէջ բացուած դուռ մը
կար, և առջի ձայնը որ լսեցի,
փողի նման էր, որ ինծի հետ կը
խօսէր ու կ՚ըսէր. Հոս ելիր՝ ու
ասկէ ետքը ըլլալու բաները քեզի
2 ցուցընեմ ։ Եւ շուտ մը Հոգին
իմ վրաս եկաւ. և ահա աթոռ
3 մը դրուած էր երկինքի մէջ. Ու
աթոռին վրայ մէկը նստեր էր. և
նստողը յասպիս ու սարդիոն քա-
4 րերու երեւոյթին նման էր ։ Եւ
աթոռին բոլորտիքը ծիածան՝
զմրուխտի երեւոյթի նման. ու ա-
թոռին բոլորտիքը քսանուչորս
աթոռներ, և ան աթոռներուն
վրայ քսանուչորս երէցներ նստեր
էին՝ ճերմակ հանդերձներ հա-
գած, ու գլուխնին ոսկիէ պսակ-
5 ներ ունէին ։ Եւ աթոռէն փայ-
լակներ ու ձայներ և որոտումներ
կ՚ելլէին, ու աթոռին առջեւ
եօթը հատ բորբոքած կրակի ղամ-
բարներ կային, որոնք Աստուծոյ
6 եօթը Հոգիներն են ։ Եւ աթո-
ռին առջեւ բիւրեղ ապակեղէն ծով
մը՝ ակնվանիի նման, և աթո-
ռին մէջը՝ ու աթոռին բոլորտիքը
չորս կենդանիներ, որ աչքերով
լեցուն էին առջեւէն ու ետեւէն ։
7 Եւ առջի կենդանին՝ առիւծի նը-
ման էր, ու երկրորդ կենդանին՝
զուարակի նման, և երրորդ կեն-
դանին մարդու երես ունէր, ու
չորրորդ կենդանին՝ թռչող ար-
8 ծիւի նման ։ Եւ չորս կենդանի-
ներուն ամէն մէկը շուրջանակի
վեց վեց թեւ ունէր. ու ներսէն
աչքերով լեցուն էին. ու չէին
հանգչեր ոչ ցորեկը ոչ ալ գիշերը՝
ըսելով. Սուրբ՝ Սուրբ՝ Սուրբ
Տէր Աստուած Ամենակալ, որ
9 էր, և որ է, և որ պիտի գայ ։ Ու
երբոր ան կենդանիները փառք ու
պատիւ և գոհութիւն կու տային
աթոռին վրայ նստողին՝ որ կեն-
դանի է յաւիտեանս յաւիտենից,
10 Քսանուչորս երէցները աթոռին
վրայ նստողին առջեւը կ՚իյնային՝
ու երկրպագութիւն կ՚ընէին յա-
ւիտեանս յաւիտենից կենդանի ե-
ղողին, և իրենց պսակները աթո-
ռին առջեւը կը ձգէին՝ ըսելով.
11 Արժանի ես Տէր՝ փառք ու պա-
տիւ և զօրութիւն առնելու. ինչու
որ ամէն բան դուն ստեղծեցիր,
ու քու կամքովդ եղան ու ստեղ-
ծուեցան ։

## ԳԼ. Ե

1 Եօթը կնիքով կնքուած գիրքը ։ 9 Միայն մորթուած Գառնուկը արժանի էր զանիկայ բանալու ։ 12 Վասն որոյ երէցները փառք ու գոհութիւն կու տան անոր, 9 ու կը խոստովանին թէ անիկայ փրկեց զիրենք իր արիւնովը ։

1 Ու աթոռին վրայ նստողին աջ
ձեռքը մէկ գիրք մը տեսայ՝
ներսէն ու դուրսէն գրուած, և
2 եօթը կնիքով կնքուած ։ Ու մէկ
զօրաւոր հրեշտակ մը տեսայ՝ որ
մեծ ձայնով կը կանչէր. Ո՞վ ար-
ժանի է այս գիրքը բանալու, ու
3 անոր կնիքները քակելու ։ Եւ
ոչ երկինքի մէջ՝ ոչ երկրի վրայ
ու ոչ երկրի տակը [illegible]
մէկը՝ որ կարող ըլլար ան գիրքը
բանալու, ոչ ալ անոր նայելու ։
4 Ես ալ սաստիկ կու լայի՝ որ մէկը
արժանի չգտնուեցաւ ան գիրքը
բանալու, ոչ ալ անոր նայելու ։
5 Ու երէցներէն մէկը ըսաւ ինծի.
Մի՛ լար. ահա Յուդայի ցեղէն
եղող Առիւծը՝ Դաւիթի Արմատը
յաղթեց ան գիրքը բանալու՝ ու
անոր եօթը կնիքները քակելու ։
6 Եւ տեսայ որ աթոռին ու չորս կեն-
դանիներուն մէջտեղը և երէցներուն
մէջտեղը կայնած Գառնուկ մը
կար՝ որպէս թէ մորթուած, որ
եօթը եղջիւր ու եօթը աչք ունէր,
որոնք Աստուծոյ եօթը Հոգիներն
են՝ որ բոլոր երկիրը կը խրկուին ։
7 Եւ անիկայ եկաւ՝ ու աթոռին
վրայ նստողին աջ ձեռքէն գիրքը
8 առաւ ։ Ու երբոր գիրքը առաւ,
չորս կենդանիները ու քսանուչորս
երէցները Գառնուկին առջեւը ին-
կան, և ամէնքն ալ քնարներ ու-
նէին, ու ոսկիէ խնկամաններ խուն-
կով լեցուն, որ սուրբերուն ա-
9 ղօթքներն են ։ Եւ նոր երգ մը կ՚երգէին
ըսելով. Արժանի ես դուն այս
գիրքը առնելու՝ ու անոր կնիքները
բանալու. ինչու որ մորթուեցար,
ու մեզ ծախու առիր Աստուծոյ՝
քու արիւնովդ ամէն ցեղէ ու լե-
10 զուէ և ժողովուրդէ ու ազգէ. Եւ
ասոնք մեր Աստուծոյ թագաւորներ
ու քահանաներ ըրիր, ու երկրի
11 վրայ պիտի թագաւորեն ։ Եւ նա-
յեցայ՝ ու շատ հրեշտակներու ձայն
լսեցի, որոնք աթոռին՝ ու կեն-
դանիներուն և երէցներուն բոլոր-
տիքն էին. ու անոնց թիւն էր
բիւր բիւրուց՝ և հազարք հազա-
12 րաց. Որոնք մեծ ձայնով կ՚ըսէին.

Յամփ Տեառն 96

Արժանի է մորթուած Գառնուկը առ-
նելու զօրութիւն՝ ու հարստու-
թիւն՝ և իմաստութիւն՝ ու կա-
րողութիւն՝ և պատիւ ու փառք
13 ու օրհնութիւն ։ Եւ բո-
լոր արարածները՝ որ երկինքի մէջ՝
ու երկրի վրայ՝ ու երկրի տակը և
ծովու մէջ, ու ամէն ինչ որ անոնց
մէջը կայ՝ լսեցի որ կ'ըսէին. Ա-
թոռին վրայ նստողին՝ և Գառնու-
կին՝ օրհնութիւն ու պատիւ և
փառք ու զօրութիւն յաւիտեանս
14 յաւիտենից ։ Եւ չորս կենդանի-
ները կ'ըսէին՝ Ամէն. ու երէցները
ինկան՝ ու երկրպագութիւն ըրին ։

## ԳԼ. Զ

1 Կնիքներուն կարգաւ բացուիլը, ու անոնց հետևած երևոյթները ։

1 Եւ տեսայ՝ երբոր Գառնուկը
եօթը կնիքներուն մէկը բացաւ,
ու չորս կենդանիներուն մէկէն ո-
րոտումի պէս ձայն մը լսեցի՝ որ
2 կ'ըսէր, Եկո՛ւր ու տե՛ս ։ Ու տե-
սայ՝ և ահա՛ ճերմակ ձի մը. ու
անոր վրայ հեծնողը աղեղ մը ու-
նէր. և պսակ մը տրուեցաւ ա-
նոր. և անիկայ յաղթող էր, ու
յաղթելու ելաւ ։
3 Ու երբոր երկրորդ կնիքը բա-
ցաւ, երկրորդ կենդանիէն լսեցի՝
4 որ կ'ըսէր, Եկո՛ւր ։ Եւ ուրիշ ձի
մը ելաւ շառագոյն, ու անոր վրայ
հեծնողին իշխանութիւն տրուեցաւ
որ երկրէս խաղաղութիւնը առնէ,
որ իրար սպաննեն. ու անոր մէկ
մեծ սուր մը տրուեցաւ ։
5 Ու երբոր երրորդ կնիքը բացաւ,
երրորդ կենդանիէն լսեցի՝ որ կ'ը-
սէր, Եկո՛ւր ու տե՛ս. ու տեսայ՝
և ահա՛ սև ձի մը, ու անոր վրայ
հեծնողը իր ձեռքը կշիռ մը ունէր ։
6 Ու չորս կենդանիներուն մէջէն ձայն
մը լսեցի՝ որ կ'ըսէր. Կապիճ մը
ցորենը մէկ դահեկանի, ու իրեք
կապիճ գարին մէկ դահեկանի. և
ձէթին ու գինիին վնաս չընես ։
7 Ու երբոր չորրորդ կնիքը բա-
ցաւ, չորրորդ կենդանիէն ձայն մը
լսեցի՝ որ կ'ըսէր, Եկո՛ւր ու տե՛ս ։
8 Ու տեսայ՝ և ահա՛ դեղին ձի մը, ու
անոր վրայ հեծնողին անունը Մահ
էր, և Դժոխքը անոր ետևէն կ'եր-
թար. ու անոր իշխանութիւն տը-
րուեցաւ երկրի չորրորդ մասին
վրայ, որ սրով ու սովով և մա-
հով՝ ու երկրի գազաններով սատ-
կեցընէ ։
9 Ու երբոր հինգերորդ կնիքը բա-
ցաւ, սեղանին տակը տեսայ այն
մարդոց հոգիները, որ սպաննուած
էին Աստուծոյ խօսքին համար,
ու անոր վկայութեանը համար որ
10 իրենք ունէին. Եւ մեծ ձայնով ա-
ղաղակեցին ու ըսին. Ո՛վ սուրբ
ու ճշմարիտ Տէր՝ մինչև ե՞րբ չես
դատեր, ու մեր արիւնին վրէժը
երկրի բնակիչներէն պահանջեր ։
11 Եւ ճերմակ հանդերձներ տրուե-
ցաւ անոնց, ու ըսուեցաւ անոնց՝
որ քիչ մը ատեն ալ հանգչին,
մինչև որ անոնց ծառայակիցները
ու անոնց եղբայրները լման ըլլան,
որոնք իրենց պէս պիտի սպան-
նուէին ։
12 Եւ տեսայ՝ երբոր վեցերորդ կնի-
քը բացաւ, ու մեծ շարժ մը ե-
ղաւ, ու արեը սևցաւ մազեղէն
քուրձի մը պէս, և լուսինը բոլորո-
13 վին արիւնի պէս եղաւ. Ու երկնից
աստղերը գետինը թափթփեցան,
ինչպէս որ սաստիկ հովէն շար-
ժուած թզենին իր տհաս պտուղնե-
14 րը կը թափէ. Եւ երկինքը գալա-
րուող տոմսի պէս կը քաշուէր.
ու բոլոր լեռները և կղզիները ի-
15 րենց տեղերէն շարժեցան ։ Ու երկ-
րի թագաւորները և մեծամեծները
ու հազարապետները և հարուստ-
ները և զօրաւորները ու բոլոր ծա-
ռաները ու բոլոր ազատները այ-
րերուն և լերանց ապառաժներուն
16 մէջ պահուըտեցան. Եւ լեռնե-
րուն ու ապառաժներուն կ'ըսէին.
Վրանիս ինկէք ու մեզ ծածկեցէք
անոր երեսէն՝ որ աթոռին վրայ կը
նստի, ու Գառնուկին բարկութե-
17 նէն. Ինչու որ անոր բարկու-
թեանը մեծ օրը եկաւ, ու ո՞վ
կրնայ դիմանալ ։

## ԳԼ. Է

2 Մէկ հրեշտակի մը Աստուծոյ ծառաներուն ճակատները կը կնքէ ։ 4 Կնքուածներուն թիւը՝ այսինքն Իսրայէլի ամէն մէկ ցեղէն որոշեալ թիւ մը, 9 ու բոլոր ուրիշ ազգերէն անհամար ժողովուրդներ՝ որոնք աթոռին առջեւ կը կենային ճերմակ հանդերձներ հագած՝ ու ձեռքերնին արմաւենիներ բռնած ։ 14 Անոնց հանդերձները Գառնուկին արիւնովը լուացուած էին ։

1 Եւ ասկէ ետև տեսայ չորս հրեշ-
տակներ՝ որոնք երկրի չորս ան-
կիւնը կեցեր էին, ու երկրի չորս
հովերը բռներ էին, որ երկրի վրայ
հով չփչէ, ու ոչ ծովու վրայ, ո՛չ
2 ալ մէկ ծառի մը վրայ ։ Եւ մէկ
ուրիշ հրեշտակ մը տեսայ՝ որ ա-
րևելքէն ելաւ, ու կենդանի Աս-
տուծոյ կնիքը ունէր. և մեծ ձայ-
նով մը աղաղակեց այն չորս հրեշ-
տակներուն, որոնց իշխանութիւն
տրուած էր երկրին ու ծովուն վնա-
3 սելու, Ու ըսաւ. Երկրին վնաս
մի՛ ընէք, ոչ ծովուն, ո՛չ ալ
ծառերուն, մինչև որ մեր Աստու-
ծոյն ծառաներուն ճակատները
4 կնքենք ։ Եւ կնքուածներուն

Յամ Տեառն 96

համրանքը լսեցի՝ որ էր հարիւր
քառասունուչորս հազար՝ Իսրայէլի
որդւոցը բոլոր ցեղերէն կնքուած ։
5 Յուդայի ցեղէն տասներկու հա-
զար կնքուած , Ռուբէնի ցեղէն
տասներկու հազար կնքուած ,
Գադի ցեղէն տասներկու հազար
6 կնքուած , Ասերի ցեղէն տասներ-
կու հազար կնքուած , Նեփթաղիմի
ցեղէն տասներկու հազար կըն-
քուած , Մանասէի ցեղէն տասներ-
7 կու հազար կնքուած , Շմաւոնի
ցեղէն տասներկու հազար կըն-
քուած , Ղեւիի ցեղէն տասներկու
հազար կնքուած , Իսաքարի ցեղէն
տասներկու հազար կնքուած ,
8 Զաբուղոնի ցեղէն տասներկու
հազար կնքուած , Յովսէփի ցեղէն
տասներկու հազար կնքուած , Բե-
նիամինի ցեղէն տասներկու հա-
զար կնքուած ։
9 Անկէ ետքը տեսայ , ու ահա մեծ
բազմութիւն՝ որն որ մէկը չէր կըր-
նար համրել , բոլոր ազգերէն՝ ու
ցեղերէն՝ և ժողովուրդներէն՝ ու
լեզուներէն , որոնք աթոռին առ-
ջեւ ու Գառնուկին առջեւ կեցեր
էին՝ ճերմակ հանդերձներ հագած ,
և ձեռքերնին արմաւենիներ բըռ-
10 նած ։ Եւ մեծաձայն կ'աղաղակէին
ըսելով . Փրկութիւնը մեր Աստու-
ծոյ՝ որ աթոռին վրայ կը նստի , ու
11 Գառնուկին ։ Եւ բոլոր հրեշտակ-
ները աթոռին ու երէցներուն և
չորս կենդանիներուն բոլորտիքը
կեցեր էին , ու իրենց երեսներուն
վրայ աթոռին առջեւ ինկան՝ ու
Աստուծոյ երկրպագութիւն ըրին ,
12 ըսելով . Ամէն . օրհնութիւն ու
փառք և իմաստութիւն ու գոհու-
թիւն և պատիւ ու զօրութիւն և
կարողութիւն մեր Աստուծոյն յա-
13 ւիտեանս յաւիտենից . ամէն ։ Ու
երէցներէն մէկը պատասխան տա-
լով՝ ինծի ըսաւ . Ասոնք որ ճեր-
մակ հանդերձներ հագած են՝ ո՞վ
14 են , և ո՞ւսկից եկան ։ Ես ալ ըսի
անոր . Տէր իմ՝ դուն գիտես . ու
ըսաւ ինծի . Ասոնք են մեծ նեղու-
թենէ եկողները , որ իրենց հան-
դերձները լուացին , ու զանոնք
Գառնուկին արիւնովը ճերմկցու-
15 ցին ։ Անոր համար Աստուծոյ ա-
թոռին առջեւն են , և իրեն կը ծա-
ռայեն ցորեկ ու գիշեր իր տաճա-
րին մէջը . և աթոռին վրայ նստո-
ղը իր վրանը պիտի տարածէ անոնց
16 վրայ . Այսուհետեւ ոչ պիտի ա-
նօթենան՝ ու ոչ ծարաւին , ոչ
ալ արեւը՝ կամ մէկ տաքութիւն մը
17 անոնց վրայ պիտի իյնայ . Վասն
զի Գառնուկը որ աթոռին մէջն է ,
պիտի հովուէ զանոնք , ու կենդա-
նի ջուրերու աղբիւրները պիտի ա-
ռաջնորդէ զանոնք . և Աստուած
բոլոր արցունքները պիտի սրբէ ա-
նոնց աչքերէն ։

## ԳԼ . Ը

1 Եօթներորդ կնիքը բացուած ժամանակը , 2 եօթը հրեշտակներու եօթը փողեր կը տրուի ։ 6 Անոնցմէ չորսը իրենց փողերը կը հնչեցնեն , որուն կը հետեւի մեծ հարուածներ ու պատուհասներ ։

1 Ու երբոր եօթներորդ կնիքը բա-
ցաւ , լռութիւն եղաւ երկին-
քը կէս ժամու չափ ։
2 Եւ տեսայ այն եօթը հրեշտակ-
ները , որ Աստուծոյ առջեւ կը կայ-
նէին . ու անոնց եօթը փող տը-
3 րուեցաւ ։ Եւ ուրիշ հրեշտակ մը
եկաւ սեղանին առջեւ կայնեցաւ ,
ու ոսկեղէն խնկանոց մը ունէր . և
իրեն շատ խունկ տրուեցաւ , որ
բոլոր սրբոց աղօթքներուն հետ ա-
թոռին առջեւ եղող ոսկի սեղա-
4 նին վրայ մատուցանէ ։ Եւ խուն-
կերուն ծուխը սրբոց աղօթքներուն
հետ հրեշտակին ձեռքէն Աստուծոյ
5 առջեւ ելաւ ։ Ու հրեշտակը առաւ
խնկանոցը՝ ու զանիկայ սեղանին
կրակէն լեցուց , և ձգեց երկրին
վրայ . ու եղաւ ձայներ և որո-
տումներ ու փայլակներ ու երկ-
6 րաշարժ ։ Եւ եօթը հրեշտակները
որ եօթը փողերը ունէին՝ պատրաս-
տուեցան որ հնչեցնեն ։
7 Եւ առջի հրեշտակը փողը հնչե-
ցուց , ու եղաւ կարկուտ ու կրակ
արիւնով խառնուած , ու երկրի
վրայ ձգուեցաւ , ու երկրին երրորդ
մասը այրեցաւ , և ծառերուն եր-
րորդ մասը այրեցաւ , ու ամէն կա-
նանչ խոտ այրեցաւ ։
8 Ու երկրորդ հրեշտակը փողը հնչե-
ցուց , և որպէս թէ մէկ մեծ լեռ
մը կրակով բորբոքած՝ ծովը ձգուե-
ցաւ , ու ծովուն երրորդ մասը
9 արիւն եղաւ . Եւ ծովուն մէջի
շնչաւոր արարածներուն երրորդ
մասը մեռաւ , ու նաւերուն երրորդ
մասը կորսուեցաւ ։
10 Ու երրորդ հրեշտակը փողը հնչե-
ցուց , ու երկինքէն մէկ մեծ աստղ
մը ինկաւ ջահի պէս բորբոքած ,
և գետերուն ու ջուրի աղբիւրնե-
րուն երրորդ մասին վրայ ինկաւ ։
11 Եւ այն աստղին անունը Օշինդր
էր . ու ջուրերուն երրորդ մասը
օշինդր եղաւ , և շատ մարդիկ ջու-
րերէն մեռան . քանզի դառն եղան ։
12 Ու չորրորդ հրեշտակը փողը
հնչեցուց . ու արեւին երրորդ մասը
և լուսնին երրորդ մասը ու աստղե-
րուն երրորդ մասը զարնուեցաւ ,
անանկ որ անոնց երրորդ մասը խա-
ւարի , և օրուան երրորդ մասը լոյս

Յայտ Տեառն 96

ա Գլ. Ժդ. 6 ։ Ժթ. 17 ։
բ Ոմանք՝ Հրեշտակի
ց Գլ. Թ. 12 ։ Ժա. 14 ։

չտայ , նոյնպէս ալ գիշերուանը ։
13 Եւ նայեցայ՝ ու երկինքի մէջ
թռչող ᵃարծիւի մը ᵇձայն լսեցի , որ
մեծ ձայնով կ՚ըսէր , ᶜՎա՜յ վա՜յ վա՜յ
երկրի վրայ բնակողներուն՝ ան մը-
նացած փողի ձայներուն համար ,
որ իրեք հրեշտակները պիտի հնչե-
ցընեն ։

## ԳԼ. Թ

1 Հինգերորդ հրեշտակը փողը հնչեցընելով՝ մէկ աստղ մը կ՚իյնայ երկինքէն , որուն կը տրուի անդունդին բանալին ։ 2 Անիկայ անդունդը կը բանայ , ուսկից կարիճներու պէս մարախներ կ՚ելլեն ։ 12 Մէկ վայը կ՚անցնի ։ 13 Վեցերորդ փողը կը հնչուի ։ 14 Չորս կապուած հրեշտակները կ՚արձակուին ։

1 Եւ հինգերորդ հրեշտակը փողը
հնչեցուց , ᵃու տեսայ որ երկին-
քէն աստղ մը ինկաւ երկրի վրայ ,
ᵇև անդունդին դուրին բանալին
2 անոր տրուեցաւ ․ ᶜՈւ անդունդին
դուրը բացաւ , ու ան դուրէն ծուխ
կ՚ելլէր մեծ հնոցի մը ծուխին պէս ․
ու խաւարեցաւ արևը ու օդը դու-
րին ծուխէն ։
3 ᵈԵւ ծուխէն մարախներ կ՚ելլէր
երկրի վրայ ․ ու անոնց զօրութիւն
տրուեցաւ ᵉերկրի կարիճներուն ու-
4 նեցած զօրութեանը պէս ․ Եւ ա-
նոնց ըսուեցաւ ᶠոր չվնասեն երկրի
խոտին , ոչ ալ կանանչեղէնի մը՝
և ոչ մէկ ծառի մը , հապա միայն
ան մարդոց , ᵍորոնք իրենց ճակատ-
ներուն վրայ Աստուծոյ կնիքը չու-
5 նին ։ Եւ անոնց հրաման տրուեցաւ ,
որ չսպաննեն զանոնք , ʰհապա չար-
չարեն զանոնք հինգ ամիս ․ ու ա-
նոնց տուած չարչարանքը կարիճի
տուած չարչարանքին պէս էր՝ երբոր
6 մարդը կը զարնէ ։ ⁱԵւ ան օրերը
մարդիկ մահը պիտի փնտռեն՝ ու
պիտի չգտնեն ․ և պիտի ուզեն
մեռնիլ , ու մահը անոնցմէ պիտի
7 փախչի ։ ʲԵւ մարախներուն նը-
մանութիւնը՝ պատերազմի պատ-
րաստուած ձիերու պէս , ᵏու անոնց
գլուխներուն վրայ ոսկեղէն պսակ-
ներու պէս , ˡև անոնց երեսները
8 մարդոց երեսներու պէս էր ․ Ու
անոնք մազեր ունէին կանանց մա-
զերուն պէս , ᵐու անոնց ակռաները
առիւծներու ակռաներուն պէս էր ։
9 Եւ զրահներ ունէին՝ երկաթէ զրահ-
ներու պէս ․ ⁿու անոնց թևերուն
ձայնը պատերազմի վազող շատ
ձիեր լծուած կառքերու ձայնին պէս
10 էր ։ Եւ կարիճներու նման պոչեր
ունէին , ու պոչերնուն վրայ խայ-
թոց ․ ᵒև իշխանութիւն ունէին
. հինգ ամիս մարդոց վնասելու ։
11 ᵖԵւ իրենց վրայ թագաւոր ունէին
անդունդին հրեշտակը , որուն ա-
նունը Եբրայեցերէն †Աբադոն , և
Յոյն լեզուով կ՚ըսուի †Ապողղիոն ։

ա Ղուկ. Ժ. 18 ։ Գլ. Ը. 10 ։
բ Ղուկ. Ը. 31 ։ Գլ. Ժէ. 8 ։ Ի. 1 ։ Հմր 2. 11 ։
գ Յովէլ. Բ. 2. 10 ։
դ Ել. Ժ. 4 ։ Դատ. Է. 12 ։
ե Հմր 10 ։
զ Գլ. Զ. 6 ։ Է. 3 ։
է Գլ. Ը. 7 ։
ը Գլ. Է. 3 ։ Տես Ել. Ժբ. 23 ։ Եզեկ. Թ. 4 ։
թ Գլ. Ժա. 7 ։ Հմր 10 ։
ժ Յոբ. Գ. 21 ։ Ես. Բ. 19 ։ Երեմ. Ը. 3 ։ Գլ. Զ. 16 ։
ի Յովէլ. Բ. 4 ։
լ Նաւ. Գ. 17 ։
խ Դան. Է. 8 ։
ծ Յովէլ. Ա. 6 ։
կ Յովէլ. Բ. 5, 6, 7 ։
հ Հմր 5 ։
ձ Եփե. Բ. 2 ։ Հմր 1 ։
† Այսինքն՝ Կորուսիչ ։

12 ᵃՄէկ վայը անցաւ ․ ահա՛ ասկէ
ետև երկու վայեր ալ կու գան ։
13 Եւ վեցերորդ հրեշտակը փողը
հնչեցուց ․ ու ձայն մը լսեցի Աստու-
ծոյ առջևը եղող ոսկի սեղանին
14 չորս եղջիւրներէն , Որ կ՚ըսէր
վեցերորդ հրեշտակին՝ որ փողը
ունէր ․ ᵇԵփրատ մեծ գետին վրայ
կապուած չորս հրեշտակները ար-
15 ձակէ ։ Եւ ան չորս հրեշտակները
արձակուեցան , որ պատրաստուած
էին ժամու ու օրուան և ամսու
ու տարիի համար ; որ մարդոց եր-
16 րորդ մասը մեռցընեն ։ ᶜԵւ ձիա-
ւոր զօրքերուն համրանքը ᵈերկու
բիւրք բիւրուց էր ; ու լսեցի անոնց
17 համրանքը ։ Եւ տեսիլքին մէջ
այսպէս տեսայ ձիերը , ու անոնց
վրայ հեծնողները ; որ ունէին հրե-
ղէն , ու յակնթեղէն , և ծծմբեղէն
զրահներ ․ ᵉև ձիերուն գլուխները
առիւծներու գլուխներուն պէս էր ․
ու անոնց բերնէն կրակ ու ծուխ և
18 ծծումբ կ՚ելլէր ։ Աս երեք հա-
րուածներէն մարդոց երրորդ մասը
մեռաւ , այսինքն կրակէն ու ծուխէն
ու ծծումբէն՝ որ անոնց բերնէն
19 կ՚ելլէր ։ Ինչու որ ան ձիերուն
զօրութիւնը բերաններնուն մէջն է ,
ու պոչերնուն մէջը ․ ᶠքանզի անոնց
պոչերը օձերու նման էին , ու գը-
լուխներ ունէին , որոնցմով կը վը-
20 նասէին ։ Եւ ուրիշ մարդիկը որ
աս հարուածներէն չսպաննուեցան ,
ᵍիրենց ձեռացը գործքերէն չապաշ-
խարեցին , որ երկրպագութիւն չը-
նեն դևերուն՝ ու ոսկիէ և արծաթէ
ու պղնձէ և քարէ ու փայտէ շի-
նուած ʰկուռքերուն , որոնք ոչ
կրնան տեսնել , ոչ ալ լսել , ու
21 ոչ քալել ․ Նաև չապաշխարեցին
իրենց մարդասպանութիւններէն ,
ⁱոչ ալ իրենց կախարդութիւննե-
րէն , ոչ ալ իրենց պոռնկութե-
նէն , և ոչ իրենց գողութիւննե-
րէն ։

## ԳԼ. Ժ

1 Զօրաւոր հրեշտակ մը կ՚երևնայ՝ իր ձեռքը բացուած գրքոյկ մը ունենալով ․ 6 Երդում կ՚ընէ յաւիտենական Կենդանի եղողին վրայ , թէ ալ ուրիշ ժամանակ պիտի չըլլայ ։ 9 Յովհաննէսին հրաման կ՚ըլլայ որ ան գիրքը առնէ և ուտէ ։

1 Եւ տեսայ ուրիշ զօրաւոր հրեշ-
տակ մը՝ որ երկինքէն կ՚իջնէր ,
ու ամպ հագած էր , ᵃև իր գլխուն
վրայ ծիածան կար ․ ᵇու իր երեսը
արևի պէս էր , ᶜև իր ոտքերը կրակի
2 սիւներու պէս ․ Եւ իր ձեռքը գըր-
քոյկ մը ունէր բացուած ․ ᵈու իր
աջ ոտքը ծովուն վրայ դրաւ , և
3 ձախը՝ ցամաքին վրայ ․ Եւ մեծ
ձայնով աղաղակեց՝ առիւծի մը մռն-
չելուն պէս ․ ու երբոր աղաղակեց ,

Յայտ Տեառն 96

ա Գլ. Ը. 13 ։
բ Գլ. Է. 12 ։
գ Եզեկ. Լ. 4 ։
դ Սաղ. ԿԸ. 17 ։ Դան. Է. 10 ։
ե Գլ. Է. 4 ։
զ Իմաստ. Ժբ. 8 ։ Ես. Ե. 28, 29 ։
է Ես. Թ. 15 ։
ը Օր. Լ. 29 ։
թ Ղևտ. ԺԷ. 7 ։ Բ Օր. Լ. 17 ։ Սաղ. ՃԶ. 37 ։ ա Կոր. Ժ. 20 ։
ժ Սաղ. ՃԺԵ. 4 ։ ՃԼԵ. 15 ։ Դան. Ե. 23 ։
ի Գլ. ԻԲ. 15 ։
ա Եզեկ. Ա. 28 ։
բ Մատ. ԺԷ. 2 ։ Գլ. Ա. 16 ։
գ Գլ. Ա. 15 ։
դ Մատ. ԻԸ. 18 ։

Յամ. Տեառն 96

է եօթը որոտումները իրենց ձայնե-
4 րովը խօսեցան ։ Ու երբոր եօթը
որոտումները խօսեցան, պիտի գը-
րէի. ու երկինքէն ձայն մը լսեցի որ
կ՚ըսէր. Կնքէ ան բաները որ եօ-
թը որոտումները խօսեցան, ու
5 զանոնք մի՛ գրեր ։ Եւ ան հրեշ-
տակը որ ծովուն վրայ ու ցամաքին
վրայ կայնած տեսայ, իր աջ ձեռքը
6 երկինքը վերցուց ։ Ու երդում
ըրաւ յաւիտեանս յաւիտենից կեն-
դանի եղողին վրայ, որ ստեղծեց
երկինքը ու ինչ որ անոր մէջն է,
ու երկիրը և ինչ որ անոր մէջն է,
և ծովը ու ինչ որ անոր մէջն է,
Թէ ալ ժամանակ պիտի չըլլայ.
7 Հապա եօթներորդ հրեշտակին
ձայնին օրերը՝ երբոր փողը հնչեցը-
նէ, Աստուծոյ խորհուրդը պիտի
կատարուի, ինչպէս որ իր ծառա-
ներուն մարգարէներուն աւետիս
տուաւ ։
8 Եւ ան ձայնը որ երկինքէն լսե-
ցի, նորէն խօսեցաւ ինծի՝ ու ը-
սաւ. Գնա՛ առ ան բաց գրքոյկը՝
որ ծովուն ու ցամաքին վրայ կայ-
9 նող հրեշտակին ձեռքն է ։ Ես
ալ հրեշտակին գացի, ու ըսի ա-
նոր. Տո՛ւր ինծի այդ գրքոյկը. ու
ըսաւ ինծի. Ա՛ռ անիկայ՝ ու
կեր. և քու փորիդ մէջ դառնու-
թիւն պիտի պատճառէ, բայց
բերնիդ մէջ մեղրի պէս անոյշ պի-
10 տի ըլլայ ։ Եւ գրքոյկը հրեշտա-
կին ձեռքէն առի, ու կերայ զա-
նիկայ. Եւ իմ բերնիս մէջը մեղրի
պէս անոյշ էր. և ուտելէս ետքը
փորիս մէջը դառնութիւն եղաւ ։
11 Ու ըսաւ ինծի. Պէտք է որ դուն
նորէն մարգարէութիւն ընես շատ
ժողովուրդներու՝ և ազգերու՝ ու
լեզուներու՝ և թագաւորներու
*վրայով ։

Եզեկ. բ. 5. Դան. ը. 26. ժբ. 4. 9. Ելք. զ. 8. Դան. ժբ. 7. Նեեմ. Թ. 6. Գլ. դ. 11. ժդ. 7. Դան. ժբ. 7. Գլ. ժզ. 17. Գլ. ժա. 15. Եզեկ. 4. Երեմ. ժե. 16. Եզեկ. բ. 8. գ. 1, 2, 3. Եզեկ. գ. 3. Եզեկ. ր. 10.

*Կամ, առջև։

## ԳԼ. ԺԱ

3 Երկու վկաները կը մարգարէանան ։ 6 Անոնք իշխանութիւն պիտի ունենան երկինքը գոցելու՝ որ անձրև չգայ ։ 7 Գազանը պիտի պատերազմի անոնց դէմ, ու սպաննէ զանոնք ։ 8 Անոնք չթաղուած պիտի մնան, 11 և իրեք ու կէս օրէն ետև յարութիւն պիտի առնեն ։ 14 Երկրորդ վայը կ՚անցնի ։ 15 Եօթներորդ փողը կը հնչուի ։

1 Եւ ինծի մէկ եղէգ մը տրուեցաւ
գաւազանի պէս, և հրեշտակը
կայներ էր՝ ու կ՚ըսէր. Ելի՛ր ու
չափէ Աստուծոյ տաճարը ու սե-
ղանը՝ և անոր մէջ երկրպագու-
2 թիւն ընողները ։ Ու գաւիթը՝
որ տաճարին դուրսն է, ձգէ և մի՛
չափեր. Քանզի որ անիկայ հեթա-
նոսներուն տրուած է, ու անոնք
սուրբ քաղաքը պիտի կոխկռտեն
3 քառասունըերկու ամիս ։ Եւ իմ
երկու վկաներուս իշխանութիւն պիտի

Եզեկ. խ. 3. Զաք. բ. 1. Գլ. իա. 15. Բ Թագ. իգ. 15. Եզեկ. խ. 17, 20. Սաղ. հթ. 1. Ղուկ. իա. 24. Եզեկ. ր. 10. Գլ. ժգ. 5. Գլ. ի. 4.

տամ, և անոնք քուրձ հագած հա-
զար երկու հարիւր ու վաթսուն օր
մարգարէութիւն պիտի ընեն ։
4 Ասոնք ան երկու ձիթենիները ու
երկու ճրագներն են, որ երկրին
5 Տէրոջը առջևը կը կենան ։ Եւ
թէ որ մէկը ուզէ անոնց վնաս ը-
նել, անոնց բերաններէն կրակ
կ՚ելլէ. ու իրենց թշնամիները կ՚ու-
տէ. և թէ որ մէկը ուզէ անոնց
վնաս ընել, պէտք է որ անիկայ
6 այսպէս սպաննուի ։ Ասոնք իշխա-
նութիւն ունին երկինքը գոցելու՝
որ իրենց մարգարէութեան օրերը
անձրև չգայ, ու ջուրերուն վրայ
իշխանութիւն ունին՝ անոնք արիւն
դարձնելու, և ամէն կերպ պա-
տուհասներով երկիրը զարնելու՝
7 քանի անգամ որ ուզեն ։ Ու երբ-
որ իրենց վկայութիւնը կատարեն,
ան ատենը անդունդէն ելլող գա-
զանը անոնց հետ պատերազմ պի-
տի ընէ, և անոնց պիտի յաղթէ, ու
8 պիտի սպաննէ անոնք ։ Եւ անոնց
դիերը՝ ինկած պիտի մնան ան մեծ
քաղաքին հրապարակին մէջ, որ
հոգևորապէս կ՚ըսուի Սոդոմ ու Ե-
գիպտոս, ուր որ իրենց Տէրն ալ
9 խաչուեցաւ ։ Եւ ժողովուրդնե-
րէն՝ ու ցեղերէն՝ և լեզուներէն՝ ու
ազգերէն պիտի տեսնեն անոնց դի-
երը իրեք ու կէս օր. ու թող
պիտի չտան անոնց դիերը գերեզ-
10 մաններու մէջ թաղելու ։ Եւ
անոնք որ երկրի վրայ կը բնակին,
ուրախ պիտի ըլլան ու ինդան ա-
նոնց վրայ. մինչև անգամ իրարու
ընծաներ պիտի ղրկեն. Քանզի որ
աս երկու մարգարէները երկրի
բնակիչները չարչարեցին ։
11 Եւ իրեք ու կէս օրէն ետև՝
Աստուծմէ կենդանութեան հոգի
մտաւ անոնց մէջ, ու իրենց ոտքե-
րուն վրայ կայնեցան. և զանոնք
տեսնողներուն վրայ մեծ վախ ին-
12 կաւ ։ Ու երկինքէն մեծ ձայն մը
*լսեցի, որ կ՚ըսէր անոնց. Վե՛ր
ելէք՝ հոս. և անոնք ամ-
պով երկինքը վերացան. ու անոնց
13 թշնամիները զանոնք տեսան ։ Եւ
նոյն ժամուն մեծ երկրաշարժ մը
եղաւ, ու քաղաքին տասներորդ
մասը կործանեցաւ. և ան երկրա-
շարժէն եօթը հազար մարդիկ մե-
ռան. ու մնացածները վախով լե-
ցուեցան, ու փառք տուին եր-
14 կնից Աստուծոյն ։ Երկրորդ վայը
անցաւ. ահա երրորդ վայը շու-
տով կու գայ ։
15 Ու եօթներորդ հրեշտակը փողը
հնչեցուց. ու երկինքի մէջ մեծ
ձայներ եղան՝ որ կ՚ըսէին. Աշ-
խարհին թագաւորութիւնը մեր

Յամ. Տեառն 96

Գլ. ժբ. 6. Գլ. ժթ. 10. Սաղ. ծբ. 8. Երեմ. ժա. 16. Զաք. դ. 3, 11, 14. Բ Թագ. ա. 10, 12. Երեմ. ա. 10. ե. 14. Եզեկ. խգ. 3. Ովս. զ. 5. Ղուկ. ժգ. 29. Գ Թագ. ժէ. 1. Յակ. ե. 16, 17. Ելք. է. 19. Դան. ժդ. 32. Գլ. Թ. 2. Գլ. ժգ. 1. 11. ժէ. 8. Դան. է. 21. Զաք. ժդ. 2. Գլ. ժդ. 8. ժէ. 1, 5. ժը. 10. Եբր. ժգ. 12. Գլ. ժը. 24. Գլ. ժէ. 15. Սաղ. ճթ. 2, 3. Գլ. ժբ. 12. ժգ. 8. Եսթ. Թ. 19, 22. Գլ. ժզ. 10. Եզեկ. լէ. 5, 9, 10, 14.

*Ոմանք լսեցին.

Ես. ժդ. 13. Գլ. ժբ. 5. Ես. կ. 8. Գործ. ա. 9. Գ Թագ. ր. 1, 5, 7. Գլ. զ. 12. Գլ. ժզ. 19. Յես. է. 19. Գլ. ժդ. 7. ժե. 4. Գլ. ր. 13. Թ. 12. ժե. 1. Գլ. ժ. 7. Ես. իէ. 13. Գլ. ժզ. 17. ժթ. 6. Գլ. ժբ. 10.

Յամ. Տեառն 96

Տէրոջը ու իր Օծեալինը եղաւ, և
ինքը պիտի թագաւորէ յաւի-
16 տեանս յաւիտենից ։ Եւ քսան-
ուչորս երէցները որ իրենց աթոռ-
ներուն վրայ նստած էին Աստուծոյ
առջևը, իրենց երեսներուն վրայ
ինկան, և Աստուծոյ երկրպագու-
17 թիւն ըրին՝ ըսելով. Քեզի գոհու-
թիւն կը մատուցանենք Ամենակալ
Տէր Աստուած՝ որ ես, և որ էիր,
որ քու մեծ զօրութիւնդ առիր,
18 ու թագաւորեցիր ։ Եւ ազգերը
բարկացան. ու քու բարկութիւնդ
եկաւ, և մեռելներուն ժամանա-
կը՝ որ դատուին, ու վարձք տաս
քու ծառաներուդ մարգարէներուն
և սուրբերուն ու քու անունէդ
վախցողներուն՝ պզտիկներուն ու
մեծերուն, և երկրի ապականիչ-
ները ապականես ։
19 Ու երկինքի մէջ Աստուծոյ տա-
ճարը բացուեցաւ, և *անոր ուխ-
տին տապանակը իր տաճարին մէջը
երեւցաւ. ու եղան փայլակներ ու
ձայներ, և որոտումներ, ու երկրա-
շարժ, և խոշոր կարկուտ ։

ԳԼ. ԺԲ

1 Մէկ կնիկ մը արեւը իր վրան հագած՝ ցաւ կը քաշէ ։ 4 Մեծ հրեղէն վիշապ մը անոր առջևը կը սպասէ, որ կլլէ անոր ծնանելու որդին. 6 բայց կինը երբոր կը ծնանի, անապատը կը փախչի ։ 7 Միքայէլ ու իր հրեշտակները վիշապին հետ կը պատերազմին, ու անոր կը յաղթեն ։ 13 Վիշապը երկրի վրայ ինկալէն ետքը կինը կը հալածէ ։

1 Ու երկինքի մէջ մեծ նշան մը երե-
ցաւ. մէկ կնիկ մը արեւը իր վը-
րան առած, ու լուսինը իր ոտքե-
րուն տակը. և իր գլխուն վրայ
2 տասուերկու աստղէ պսակ մը. Եւ
յղի էր, ու երկանց մէջ ըլլալով,
և ծնանելու համար շատ նեղու-
թիւն քաշելով կը պոռար ։
3 Ու երկինքի մէջ ուրիշ նշան մը
երեւցաւ, և ահա մէկ մեծ շառա-
գոյն վիշապ մը, որ եօթը գլուխ
ու տասը եղջիւր ունէր, և իր գը-
4 լուխներուն վրայ եօթը թագ ։ Եւ
անոր պոչը երկինքի աստղերուն
երրորդ մասը կը քաշէր, ու անոնք
երկրի վրայ ձգեց. և վիշապը կե-
ցեր էր ան կնկանը առջևը՝ որ ծնա-
նելու վրայ էր. որ երբոր ծնանի,
5 անոր զաւակը կլլէ ։ Ու էրիկ արու
զաւակ մը ծնաւ, որ երկաթէ
գաւազանով պիտի հովուէր բոլոր
ազգերը. և անոր զաւակը յափշը-
տակուեցաւ Աստուծոյ քովը, ու
6 անոր աթոռին քովը ։ Եւ կնիկը
անապատը փախաւ, ուր որ անոր
տեղ պատրաստուած էր Աստուծ-
մէ, որ հոն կերակրուի հազար եր-
կու հարիւր ու վաթսուն օր ։
7 Ու երկինքի մէջ պատերազմ ե-
ղաւ. Միքայէլ ու իր հրեշտակ-
ները վիշապին հետ պատերազմե-
ցան. վիշապն ալ իր հրեշտակներո-
8 վը պատերազմեցաւ. Ու չկրցան
դէմ կենալ. ու երկինքի մէջ՝ ալ
9 տեղ չգտնուեցաւ անոնց ։ Եւ
վար ձգուեցաւ մեծ վիշապը՝ հին
առջի օձը որ Բանսարկու ու Սա-
տանայ կ'ըսուի, որ բոլոր աշխարհ
մոլորցուց. նու իր հրեշտակները
իրեն հետ վար ձգուեցան երկրի վը-
10 րայ ։ Եւ մեծ ձայն մը լսեցի եր-
կինքի մէջ՝ որ կ'ըսէր. Հիմա եղաւ
մեր Աստուծոյ փրկութիւնը ու զօ-
րութիւնը և թագաւորութիւնը,
ու անոր Օծեալին իշխանութիւնը.
ինչու որ մեր եղբայրներուն դէմ
չար խօսողը վար ձգուեցաւ, որ
անոնց դէմ չարախօսութիւն կ'ը-
նէր մեր Աստուծոյն առջևը ցորեկ ու
11 գիշեր ։ Եւ անոնք անոր յաղթե-
ցին Գառնուկին արիւնովը, ու ի-
րենց վկայութեանը խօսքովը. և
իրենց կեանքը չսիրեցին մինչև 'ի
12 մահ ։ Անոր համար ուրախացէք
ով երկինք ու անոր մէջը բնակող-
ներ. վայ երկրին ու ծովուն որ
Բանսարկուն ձեզի իջաւ, որ շատ
բարկութիւն ունի՝ գիտնալով որ
քիչ ժամանակ պիտի կենայ ։
13 Ու երբոր վիշապը տեսաւ որ ին-
քը երկրի վրայ ձգուեցաւ, արու
զաւակ ծնանող կնկանը ետեւէն ին-
14 կաւ ։ Եւ ան կնկանը մեծ արծիւի
երկու թեւեր տրուեցաւ, որ անա-
պատ իր տեղը թռչի, հոն որ պի-
տի կերակրուէր ժամանակ ու ժա-
մանակներ ու կէս ժամանակ՝ օձին
15 երեսէն ։ Եւ օձը իր բերնէն գետի
պէս ջուր վազցուց կնկանը ետեւէն,
16 որ զանիկայ հեղեղով ընկղմէ ։ Ու
երկիրը օգնեց կնկանը, ու երկիրը
իր բերանը բացաւ, և կլլեց ան գե-
տը, որ վիշապը իր բերնէն վազ-
17 ցուց ։ Ու վիշապը բարկացաւ
կնկանը դէմ, և գնաց պատերազ-
մելու անոր ուրիշ զաւակներուն
հետ, որոնք Աստուծոյ պատուի-
րանքները կը պահէին, ու Յիսու-
սի վկայութիւնը ունէին ։
18 Եւ կայնեցայ ծովուն աւազին
վրայ.

ԳԼ. ԺԳ

1 Եօթը գլխով ու տասը եղջիւրով գազան մը ծովէն դուրս կ'ելլէ, ու վիշապը իր զօրութիւնը անոր կու տայ ։ 11 Ուրիշ գազան մը երկրէն կ'ելլէ, 14 առջի գազանին պատկերը շինել կու տայ, 15 ու կը ստիպէ մարդիկը որ անոր երկրպագութիւն ընեն, 16 ու անոր դրոշմը ընդունին ։

1 Ու տեսայ որ ծովէն գազան մը
կ'ելլէր, և ունէր եօթը գլուխ
ու տասը եղջիւր. և անոր եղջիւր-
ներուն վրայ տասը թագ, ու անոր

գլուխներուն վրայ հայհոյութեան
2 անուններ կար ։ Եւ այն գազանը
որ տեսայ՝ ընձուի նման էր, ու իր
ոտքերը արջու պէս, և իր բերանը
առիւծի բերնի պէս. ու վիշապը
անոր տուաւ իր զօրութիւնը և իր
աթոռը ու մեծ իշխանութիւն ։
3 Եւ անոր գլուխներուն մէկը մա-
հու չափ վիրաւորուածի պէս էր.
ու անոր մահուան վէրքը առողջա-
ցաւ. և բոլոր երկիրը գազանին
4 ետևէն զարմացաւ ։ Եւ երկրպա-
գութիւն ըրին վիշապին, որ գա-
զանին իշխանութիւն տուաւ, ու
երկրպագութիւն ըրին գազանին՝
ըսելով. Ո՞վ է գազանին նման.
և ո՞վ կրնայ անոր հետ պատե-
5 րազմ ընել ։ Եւ անոր մեծ բա-
ներ ու հայհոյութիւններ խօսող
բերան տրուեցաւ. և քառասուն-
ուերկու ամիս անոր իշխանութիւն
6 տրուեցաւ ընելու ։ Ու իր
բերանը հայհոյութեամբ Աստուծոյ
դէմ բացաւ, անոր անունը ու
անոր խորանը ու երկինքը բնակող-
7 ները հայհոյելու ։ Եւ անոր իշխա-
նութիւն տրուեցաւ սուրբերուն հետ
պատերազմ ընելու, ու անոնց
յաղթելու. և անոր իշխանու-
թիւն տրուեցաւ բոլոր ցեղերու՝
և ժողովուրդներու՝ ու լեզուներու՝
8 և ազգերու վրայ. Եւ անոր երկրը-
պագութիւն պիտի ընեն երկրի վը-
րայ բոլոր բնակողները, որոնց ա-
նունները աշխարհիս սկիզբէն 'ի
վեր՝ մորթուած Գառնուկին կենաց
9 գրքին մէջը գրուած չեն ։ Ո՛վ որ
10 ականջ ունի՝ թող լսէ ։ Ո՛վ որ
գերութեան քշէ, ինքը գերի պիտի
տարուի. ով որ սրով սպաննէ,
պէտք է որ ինքը սրով սպաննուի.
հոս է սուրբերուն համբերութիւ-
նը ու հաւատքը ։
11 Եւ մէկ ուրիշ գազան մը տեսայ՝
որ երկրէն կ'ելլէր, ու գառնուկի
նման երկու եղջիւր ունէր, ու կը
12 խօսէր վիշապին պէս ։ Եւ առջի
գազանին բոլոր իշխանութիւնը կը
վարէր անոր առջևը, ու երկիրը և
բոլոր անոր բնակիչները կը ստիպէր
որ երկրպագութիւն ընեն առջի
գազանին՝ որուն մահուան վէրքը
13 առողջացաւ ։ Եւ մեծ նշաններ
կ'ընէր, ու մինչև անգամ երկին-
քէն կրակ կ'իջեցընէր երկրի վրայ
14 մարդոց առջևը ։ Ու երկրի վրայ
բնակողները կը մոլորցընէր այն
նշաններով, որ իր ձեռքը տրուած
էր գազանին առջևը ընելու. ու
երկրի բնակիչներուն կ'ըսէր՝ որ
պատկեր շինեն այն գազանին, որ
սրով վիրաւորուած էր՝ ու առող-
15 ջացաւ ։ Եւ իշխանութիւն տրուե-
ցաւ անոր, որ գազանին պատկե-
րին հոգի տայ, որ գազանին պատ-
կերը խօսի. և ով որ գազանին
պատկերին երկրպագութիւն չընէ,
16 զանիկայ սպաննել տայ ։ Եւ կը
ստիպէր ամէնը՝ պզտիկները
ու մեծերը՝ և հարուստները ու աղ-
քատները՝ և ազատները ու ծառա-
ները, որ իրենց աջ ձեռքին վրայ
կամ իրենց ճակատին վրայ դրոշմ
17 ընդունին. Եւ որ մէկը չկրնայ գը-
նել կամ ծախել, բայց միայն ան
որ ունի դրոշմը կամ գազանին
անունը, կամ անոր անուանը
18 թիւը ։ Հոս է իմաստութիւնը.
ով որ միտք ունի, թող հաշուէ
գազանին թիւը. քանզի մարդու
մը թիւ է, ու անոր թիւը վեց
հարիւր վաթսունուվեց է ։

## ԳԼ. ԺԴ

1 Գառնուկը իր հետևողներովը Սիոն լեռանը վրայ կը կենայ ։ 6 Հրեշտակ մը աւետարանը կը քարոզէ ։ 8 Բաբիլոնի անկումը ։ 15 Աշխարհիս հունձքը ։ 18 այգեկութը ։ 20 Աստուծոյ բարկութեանը հնձանը ։

1 Եւ տեսայ՝ և ահա Գառնուկը
կայներ էր Սիոն լեռանը վրայ.
ու անոր հետը հարիւր քառասու-
նուչորս հազարը, որոնք ունէին
անոր անունը և անոր Հօրը անունը
իրենց ճակատներուն վրայ գրուած ։
2 Ու երկինքէն ձայն մը լսեցի՝ շատ
ջուրերու ձայնի պէս, ու մեծ որո-
տումի ձայնի մը պէս, ու լսած ձայ-
նըս քնարահարներուն իրենց քնար-
ները զարնելուն ձայնին կը նմանէր ։
3 Եւ նոր երգ կ'երգէին աթոռին
առջևը՝ ու չորս կենդանիներուն
ու երէցներուն առջևը. և մէկը
չէր կրնար այն երգը սորվիլ, բաց
'ի այն հարիւր քառասունուչորս հա-
զարէն, որոնք երկրէն փրկուած
4 էին ։ Ասոնք անոնք են՝ որ կնիկ-
ներու հետ չխառնակեցան, քանզի
կոյս են. ասոնք Գառնուկին ե-
տևէն կ'երթան՝ ուր որ այն երթայ.
ասոնք մարդոց մէջէն փրկուեցան
Աստուծոյ ու Գառնուկին երա-
5 խայրի ըլլալու. Եւ անոնց բերանը
սուտ չգտնուեցաւ, ինչու որ ան-
բիծ են ։
6 Եւ ուրիշ հրեշտակ մը տեսայ՝
որ կը թռչէր երկինքին մէջ. և
ունէր յաւիտենական աւետիսը՝
քարոզելու բոլոր ազգերուն ու
ցեղերուն և լեզուներուն ու ժողո-
վուրդներուն՝ որ երկրի վրայ կը
7 բնակին. Եւ մեծ ձայնով կ'ըսէր.
Աստուծմէ վախցէք՝ ու փառք
տուէք անոր. ինչու որ անոր դա-
տաստանին ժամը եկաւ. Ու երկրը-
պագութիւն ըրէք անոր՝ որ ստեղ-

Յամի Տեառն 96

ծեց երկինքը ու երկիրը՝ և ծովը ու
ջուրերուն աղբիւրները։
8 Եւ անոր ետեւէն ուրիշ հրեշտակ
մը եկաւ՝ ու ըսաւ. Ինկաւ՝ ինկաւ
մեծ Բաբելոնը, ինչու որ բոլոր
ազգերը արբեցուց իր կատաղի
9 պոռնկութեանը գինիէն։ Եւ ա-
նոնց ետեւէն երրորդ հրեշտակ մըն
ալ եկաւ, ու մեծ ձայնով մը ը-
սաւ. Ո՛վ որ գազանին ու անոր
պատկերին երկրպագութիւն կ'ընէ,
և դրոշմը իր ճակատին վրայ՝ կամ
10 իր ձեռքին վրայ կ'ընդունի, Ինք-
կայ Աստուծոյ սրտմտութեանը գի-
նիէն պիտի խմէ՝ որ անխառն լե-
ցուած է անոր բարկութեանը
գաւաթին մէջ. ու կրակով ու
ծծումբով պիտի տանջուի սուրբ
հրեշտակներուն առջեւ ու Գառ-
11 նուկին առջեւ։ Եւ անոնց տան-
ջանքին ծուխը կ'ելլէ յաւիտեանս
յաւիտենից. և ցորեկ ու գիշեր
հանգստութիւն չունին անոնք՝ որ
գազանին ու անոր պատկերին եր-
կրպագութիւն կ'ընեն, և անոր
12 անուանը դրոշմը կ'ընդունին։ Հոս
է սուրբերուն համբերութիւնը,
որոնք Աստուծոյ պատուիրանք-
ները ու Յիսուսի հաւատքը կը պա-
13 հեն։ Ու երկինքէն ձայն մը լսեցի՝
որ կ'ըսէր. Գրէ, Այսուհետեւ
երանելի են այն մեռելները՝ որոնք
Տէրոջմով կը մեռնին, այո՛ կ'ըսէ
Հոգին, որ իրենց աշխատութիւ-
նէն հանգչին. ու իրենց գործքերը
իրենց ետեւէն կ'երթան։
14 Եւ տեսայ՝ և ահա ճերմակ ամպ
մը, ու այն ամպին վրայ մէկը նըս-
տեր էր Որդւոյ մարդոյ նման. և
իր գլուխը ոսկիէ պսակ մը՝ ու իր
ձեռքը սուր մանգաղ մը ունէր։
15 Եւ տաճարէն ուրիշ հրեշտակ
մը կ'ելլէր, որ ամպին վրայ նստո-
ղին մեծ ձայնով կ'աղաղակէր ու
կ'ըսէր. Երկնցուր քու մանգաղդ
ու հնձէ. ինչու որ հնձելու ժա-
մանակը եկաւ, ինչու որ երկրի
16 հունձքը հասունցած է։ Եւ ան որ
ամպին վրայ կը նստէր, իր ման-
գաղը երկրին վրայ երկնցուց, ու
երկիրը հնձուեցաւ։
17 Ու երկինքին մէջի տաճարէն ու-
րիշ հրեշտակ մը ելաւ. և ասիկայ
18 ալ սուր մանգաղ մը ունէր։ Ու
սեղանէն ուրիշ հրեշտակ մը ելաւ,
որ կրակին վրայ իշխանութիւն ու-
նէր, ու մեծ ձայնով կանչեց անոր՝
որ սուր մանգաղը ունէր, ու ըսաւ.
Երկնցուր քու սուր մանգաղդ,
ու երկրի այգիին ողկոյզները կթէ.
ինչու որ անոր խաղողները հասուն-
19 ցած են։ Եւ այն հրեշտակը իր
մանգաղը երկրին վրայ երկնցուց,
ու երկրին այգիին խաղողները կթեց.
ու Աստուծոյ բարկութեանը մեծ
20 հնձանին մէջ ձգեց։ Եւ հնձանը
քաղաքին դուրսը կոխուեցաւ. ու
հնձանէն արիւն կ'ելլէր, մինչև
ձիերուն սանձերը, հազար վեց
հարիւր ասպարէզ կը հոսէր։

## ԳԼ. ԺԵ

1 Եօթը վերջին հարուածները ունեցող եօթը հրեշտակները։ 3 Գազանին յաղթողներուն երգը։ 7 Աստուծոյ բարկութեամբը լեցուն եօթը սկաւառակները։

1 Եւ ուրիշ մեծ ու զարմանալի
նշան մը տեսայ երկինքի մէջ,
եօթը հրեշտակներ՝ որոնք եօթը
վերջին հարուածները ունէին. որ-
ովհետեւ անոնցմով կը կատարուէր
2 Աստուծոյ բարկութիւնը։ Ու
տեսայ որպէս թէ ապակեղէն ծով
մը կրակով խառնուած. և անոնք
որ յաղթեցին գազանին՝ ու անոր
պատկերին՝ և անոր անուանը թի-
ւին, ապակեղէն ծովուն վրայ կայ-
ներ էին, ու Աստուծոյ քնարները
3 ունէին. Եւ Աստուծոյ ծառային
Մովսէսին երգը կ'երգէին, ու
Գառնուկին երգը՝ ըսելով. Մեծ
ու զարմանալի են քու գործքերդ՝
ով Տէր Աստուած Ամենակալ.
արդար ու ճշմարիտ են քու ճամ-
բաներդ՝ ով թագաւոր ազգաց.
4 Տէ՛ր՝ ո՞վ պիտի չվախնայ քեզմէ,
ու քու անունդ չփառաւորէ. ին-
չու որ դուն միայն սուրբ ես. Վասն-
զի բոլոր ազգերը պիտի գան՝ ու
քու առջեւդ երկրպագութիւն պիտի
ընեն, ինչու որ քու արդար դա-
տաստաններդ յայտնուեցան։
5 Եւ ասկէ ետեւ տեսայ՝ ու բա-
ցուեցաւ վկայութեան խորանին
6 տաճարը, որ երկինքն էր. Ու եօ-
թը հարուածները ունեցող եօթը
հրեշտակները մաքուր ու պայծառ
կտաւ հագած՝ և իրենց կուրծքե-
րուն վրայով ոսկեղէն գօտի կա-
7 պած՝ տաճարէն ելան։ Եւ չորս
կենդանիներէն մէկը եօթը հրեշ-
տակներուն եօթը ոսկեղէն սկաւա-
ռակներ տուաւ յաւիտեանս յա-
ւիտենից կենդանի եղող Աս-
տուծոյ բարկութիւնովը լեցուն։
8 Եւ տաճարը Աստուծոյ փառ-
քէն ու անոր զօրութենէն ծուխով
լեցուեցաւ. ու մէկը չէր կրնար
տաճարը մտնել, մինչև որ կատա-
րուին եօթը հրեշտակներուն եօթը
հարուածները։

## ԳԼ. ԺԶ

2 Հրեշտակները երկրի վրայ կը թափեն իրենց եօթը սկաւառակները որ բարկութեամբ լեցուն էին. ու զանազան հարուածներ կը հասնին։ 15 Քրիստոս գողի պէս կու գայ. երանի անոնց որ արթուն կը մնան։

Յամի Տեառն 96

ա Ես. իա. 9։ Երեմ. ծա. 8։ Գլ. ժը. 2։
բ Երեմ. ծա. 7։ Գլ. ժա. 8։ ժզ. 19։ ժէ. 2, 5։ ժը. 3, 10, 18, 21։ ժթ. 2։
գ Գլ. ժգ. 14, 15, 16։
դ Սաղ. հե. 8։ Ես. ծա. 17։ Երեմ. իե. 15։
ե Գլ. ժը. 6։
զ Գլ. ժզ. 19։
է Գլ. ժթ. 20։
ը Գլ. ի. 10։
թ Ես. լդ. 10։ Գլ. ժթ. 3։
ժ Գլ. ժգ. 10։
ի Գլ. ժբ. 17։
լ Ժող. դ. 1, 2։ Գլ. ի. 6։
խ Ա Կոր. ժե. 18։ Ա Թես. դ. 16։
ծ Բ Թես. ա. 7։ Եբր. դ. 9, 10։ Գլ. զ. 11։
կ Եզեկ. ա. 26։ Դան. է. 13։ Գլ. ա. 13։
հ Գլ. զ. 2։
ձ Գլ. ժզ. 17։
ղ Յովէլ. գ. 13։ Մատթ. ժգ. 39։
ճ Երեմ. ծա. 33։ Գլ. ժզ. 12։
մ Գլ. ժզ. 9։
յ Յովէլ. գ. 13։

ն Գլ. ժթ. 15։
շ Ես. կգ. 3։ Ողբ. ա. 15։
ո Գլ. ժա. 8։ Եբր. ժգ. 12։
չ Գլ. ժթ. 14։
պ Գլ. ժբ. 1, 3։
ջ Գլ. ժզ. 1։ իա. 9։
ռ Գլ. ժդ. 10։
ս Գլ. դ. 6։ իա. 18։
վ Մատ. գ. 11։
տ Գլ. ժգ. 15, 16, 17։
ր Գլ. ե. 9։ ժդ. 2։
ց Ել. ժե. 1։ Բ Օր. լա. 30։ Գլ. ժդ. 3։
ւ Բ Օր. լբ. 4։ Սաղ. ճժա. 2։ ճլթ. 14։
փ Սաղ. ճխե. 17։ Ովս. ժդ. 9։ Գլ. ժգ. 7։
ք Ել. ժե. 14, 15, 16։ Երեմ. ժ. 7։
օ Ես. կզ. 23։
ֆ Գլ. ժա. 19։ Թուոց. ա. 50։
ա Հռ. 1։
բ Ել. իը. 6։ Եզեկ. խդ. 17, 18։ Գլ. ա. 13։
գ Գլ. դ. 6։
դ Ա Թես. ա. 9։ Գլ. դ. 9։ ժ. 6։
ե Ել. խ. 34։ Գ Թագ. ը. 10։ Բ Մն. ե. 14։ Ես. զ. 4։
զ Բ Թես. ա. 9։

1 Ու տաճարէն մեծ ձայն մը լսեցի՝
որ եօթը հրեշտակներուն կ՚ը-
սէր. Գացէ՛ք Աստուծոյ բարկու-
թեանը եօթը սկաւառակները երկ-
րի վրայ թափեցէ՛ք ։
2 Եւ առջի հրեշտակը գնաց, ու իր
սկաւառակը երկրի վրայ թափեց.
ու չարաչար պալարներ եղաւ այն
մարդոցը վրայ, որոնք գազանին
դրոշմը ունէին՝ ու անոր պատկե-
րին երկրպագութիւն կ՚ընէին ։
3 Ու երկրորդ հրեշտակը իր սկա-
ւառակը ծովուն վրայ թափեց,
ու ջուրերը մեռած մարդու արիւն
դարձան, ու ծովուն մէջի բոլոր
կենդանիները մեռան ։
4 Ու երրորդ հրեշտակը իր սկաւա-
ռակը գետերուն և ջուրերու աղ-
բիւրներուն վրայ թափեց, ու ա-
5 նոնք արիւն դարձան ։ Եւ ջուրե-
րուն հրեշտակէն լսեցի՝ որ կ՚ըսէր.
Արդար ես դուն, որ ես՝ և որ
էիր, և սուրբ ես, որ ասանկ դա-
6 տաստաններ ըրիր. Ինչու որ ա-
նոնք սուրբերուն ու մարգարէնե-
րուն արիւնը թափեցին. և դուն
անոնց արիւն խմել տուիր. քանզի
7 արժանի են ։ Եւ սեղանէն լսեցի՝
որ կ՚ըսէր. Այո՛ Ամենակալ Տէր
Աստուած, քու դատաստաններդ
արդար ու ճշմարիտ են ։
8 Եւ չորրորդ հրեշտակը իր սկա-
ւառակը արեւին վրայ թափեց ։
9 Ու անոր զօրութիւն տրուեցաւ որ
խորշակահար ընէ մարդիկները կը-
րակով. և սաստիկ տաքէն խոր-
շակահար եղան մարդիկ, և հայ-
հոյեցին Աստուծոյ անունը, որ աս
հարուածներուն վրայ իշխանու-
թիւն ունի. ու չապաշխարեցին
որ անոր փառք տան ։
10 Եւ հինգերորդ հրեշտակը իր ըս-
կաւառակը գազանին աթոռին
վրայ թափեց, ու անոր թագաւո-
րութիւնը խաւարեցաւ. և ցաւէն
11 լեզուներնին կը ծամէին. Ու երկ-
նից Աստուածը հայհոյեցին իրենց
ցաւերուն՝ և իրենց պալարներուն
պատճառովը. ու իրենց գործքե-
րէն չապաշխարեցին ։
12 Եւ վեցերորդ հրեշտակը իր սկաւա-
ռակը մեծ գետին Եփրատին վրայ
թափեց, ու անոր ջուրերը ցամքե-
ցան, որ արեւելքի թագաւորնե-
13 րուն ճամբան պատրաստուի ։ Եւ
տեսայ որ վիշապին բերնէն ու
գազանին բերնէն և սուտ մարգա-
րէին բերնէն երեք պիղծ ոգիներ
14 գորտերու նման. Ինչու որ
անոնք դեւերու ոգիներ են՝ որ
նշաններ կ՚ընեն, ու բոլոր աշխար-
հին թագաւորներուն կ՚երթան, որ
զանոնք Ամենակալ Աստուծոյ այն
մեծ օրուանը պատերազմին հա-
15 մար ժողվեն. (Ահա գողի պէս
կու գամ. երանի անոր՝ որ ար-
թուն կը կենայ, ու իր հանդերձնե-
րը կը պահէ, որ մերկ չպտըտի,
16 ու իր ամօթը երեւնայ.) Եւ
զանոնք մէկ տեղ մը ժողվեցին, որ
Եբրայեցերէն Արմագեդոն կ՚ըսուի ։
17 Ու եօթներորդ հրեշտակը իր սկա-
ւառակը օդին վրայ թափեց. ու
երկինքին տաճարէն՝ աթոռէն մեծ
ձայն մը ելաւ՝ ըսելով. Եղաւ ։
18 Եւ փայլակներ ու ձայներ և որո-
տումներ եղան. ու մեծ երկրա-
շարժ մը եղաւ, այնանկ որ մար-
դոց երկրի վրայ ըլլալէն ՚ի վեր՝ ա-
նանկ մեծ երկրաշարժ մը եղած
19 չէր ։ Եւ մեծ քաղաքը երեք մաս
եղաւ, ու ազգերուն քաղաքները
կործանեցան, և մեծ Բաբելոնը
Աստուծոյ առջեւը յիշուեցաւ, որ
իր սաստիկ բարկութեանը գինիին
20 գաւաթը անոր տայ ։ Եւ ամէն
կղզի փախաւ, ու լեռները չգըտ-
21 նուեցան ։ Եւ խոշոր կարկուտ
գրեթէ մէկ տաղանդի մը կշիռքով
երկինքէն կ՚իջնէր մարդոց վրայ.
ու մարդիկ հայհոյեցին զԱս-
տուած՝ կարկուտին հարուածին
համար. ինչու որ խիստ մեծ էր
ան հարուածը ։

## ԳԼ. ԺԷ

3 Ծիրանիներ ու կարմիրներ հագած կին մը՝ ձեռքը ոսկեղէն գաւաթ մը բռնած՝ գազանին վրայ կը նստի ։ 5 Անիկայ է մեծ Բաբելոնը ու ամէն գարշութեանց մայրը ։ 9 Գազանին եօթը գլուխներուն, 12 ու տասը եղջիւրներուն մեկնութիւնը ։ 14 Գառնուկին յաղթութիւնը ։ 16 Պոռնիկին պատիժը ։

1 Ու եօթը սկաւառակները ունե-
ցող եօթը հրեշտակներէն մէ-
կը եկաւ, ու ինծի հետ խօսեցաւ՝
ըսելով. Եկո՛ւր՝ ու քեզի ցուցը-
նեմ այն մեծ պոռնիկին դատաս-
տանը, որ շատ ջուրերուն վրայ
2 կը նստի. Որուն հետ երկրի թա-
գաւորները պոռնկեցան, ու երկրի
բնակիչները անոր պոռնկութեանը
3 գինիով գինովցան ։ Եւ զիս ա-
նապատը տարաւ հոգիով.
ու տեսայ մէկ կնիկ մը՝ որ կարմիր
գազանի մը վրայ նստեր էր. և ան
լեցուն էր հայհոյութեան
անուններով, ու եօթը գլուխ և
4 տասը եղջիւր ունէր ։ Եւ կնիկը
ծիրանի ու կարմիր հագած էր, և
զարդարուած էր ոսկիով ու պա-
տուական քարերով և մարգարիտ-
ներով, և իր ձեռքը ոսկիէ գա-
ւաթ մը ունէր պղծութիւններով
ու իր պոռնկութեանը անմաքրու-
5 թիւններով լեցուն. Եւ անոր ճա-

Յամ Տեառն
96

կատին վրայ անուն մը գրուած էր՝ խորհուրդ . Մեծ Բաբելոն՝ պոռնիկներուն ու երկրի պղծութիւն-
6 ներուն մայրը ։ Եւ տեսայ այն կինը՝ որ սուրբերուն արիւնովը ու Յիսուսի վկաներուն արիւնովը գինովցած էր . ու երբոր տեսայ անիկայ , մեծ զարմանքով զարմացայ ։
7 Եւ հրեշտակը ինծի ըսաւ . Ինչո՞ւ զարմացար . ես քեզի ըսեմ այն կնկանը խորհուրդը , ու այն գազանին՝ որ զանիկայ վրան կը կրէ , ու եօթը գլուխ և տասը եղջիւր ունի ։
8 Այն գազանը որ տեսար , կար , ու չկայ , և անդունդէն ելլելու՝ ու կորուստը երթալու վրայ է . ու երկրի վրայ բնակողները՝ որոնց անունները աշխարհի սկիզբէն 'ի վեր կենաց գրքին մէջը գրուած չեն , պիտի զարմանան երբոր տեսնեն այն գազանը թէ կար , ու
9 չկայ , ու մօտ է ։ Հոս պէտք է իմաստութիւն ունեցող միտք մը . Այն եօթը գլուխը եօթը լեռներ են , ուր որ կինը անոնց վրայ կը նստի .
10 և եօթը թագաւորներ են . Հինգը ինկած են՝ մէկը կը կենայ , և միւսը դեռ եկած չէ , ու երբոր
11 գայ , քիչ ատեն պիտի մնայ ։ Եւ այն գազանը որ կար , ու չկայ , անիկայ ալ ութերորդ է , ու եօթնէն է . ու դէպ 'ի կորուստը կ'եր-
12 թայ ։ Եւ տասը եղջիւրը՝ որ տեսար , տասը թագաւորներ են , որոնք դեռ թագաւորութիւն առած չեն . հապա գազանին հետ մէկ ժամու չափ թագաւորներու պէս
13 իշխանութիւն կ'առնեն ։ Ասոնք մէկ կամք ունին , ու իրենց զօրութիւնը և իշխանութիւնը գազանին
14 կու տան ։ Ասոնք Գառնուկին հետ պիտի պատերազմին . և Գառնուկը անոնց պիտի յաղթէ , քանզի անիկայ տէրերուն Տէրն է՝ ու թագաւորներուն Թագաւորը . և անոր հետը եղողները՝ կանչուած ու
15 ընտրուած և հաւատարիմ են ։ Ու ըսաւ ինծի . Այն ջուրերը որ տեսար՝ որոնց վրայ պոռնիկը նստեր է , ժողովուրդներ են ու բազմութիւններ և ազգեր ու լեզուներ ։
16 Եւ տասը եղջիւրները՝ որ տեսար , ու գազանը , անոնք պիտի ատեն պոռնիկը , ու զանիկայ աւերակ ու մերկ պիտի ընեն , և անոր մարմինը պիտի ուտեն , ու զանիկայ կրակով
17 այրեն ։ Ինչու որ Աստուած անոնց սրտին մէջը դրաւ՝ որ իր կամքը կատարեն՝ ու մէկ կամք ըլլան , և իրենց թագաւորութիւնը գազանին տան , մինչև որ Աստու-
18 ծոյ խօսքերը կատարուին ։ Եւ կինը որ տեսար , այն մեծ քաղաքն է , որ կը թագաւորէ երկրի թագաւորներուն վրայ ։

ԳԼ. ԺԸ

2 Բաբելոնը կ'իյնայ ։ 4 Աստուծոյ ժողովուրդին հրաման կ'ըլլայ , որ անոր մէջէն դուրս ելլեն . 9 Երկրի թագաւորները , 11 վաճառականները 17 և նաւավարները կ'ողբան անոր վրայ ։ 20 Սուրբերը կ'ուրախանան՝ տեսնելով որ Աստուծոյ դատաստանները անոր վրայ կը կատարուին ։

1 Եւ ասկէ ետքը ուրիշ հրեշտակ մը տեսայ որ երկինքէն կ'իջնէր . և մեծ իշխանութիւն ունէր , ու երկիրը անոր փառքէն լուսաւորուե-
2 ցաւ ։ Եւ զօրաւոր ձայնով աղաղակեց՝ ըսելով . Ինկաւ՝ ինկաւ մեծ Բաբելոնը , և դևերու բնակարան եղաւ , ու բոլոր պիղծ ոգիներու արգելանոց , և բոլոր պիղծ ու ատելի թռչուններու վանդակ .
3 Ինչու որ անոր կատաղի պոռնկութեանը գինիէն խմեցին բոլոր ազգերը , ու երկրի թագաւորները անոր հետ պոռնկեցան , և երկրի վաճառականները անոր չափազանց
4 ցեխութենէն հարստացան ։ Ու երկինքէն ուրիշ ձայն մը լսեցի որ կ'ըսէր . Ելէ՛ք անոր մէջէն՝ իմ ժողովուրդս , որ անոր մեղքերուն հաղորդ չըլլաք , ու անոր հարուած-
5 ներէն բաժին չառնէք . Ինչու որ անոր մեղքերը մինչև երկինքը հասան կցուեցան . ու Աստուած անոր անիրաւութիւնները յիշեց ։
6 Հատուցէ՛ք անոր՝ ինչպէս որ ինքը հատուց . ու իր գործքերուն համեմատ կրկնապատիկ փոխարինեցէք անոր . Այն գաւաթը որ ինքը լեցուց՝ կրկնապատիկ լեցուցէք
7 իրեն ։ Ո՛րչափ որ փառաւորեց զինքը՝ և ցեղխութեամբ ապրեցաւ , այնչափ ալ տանջանք և սուգ հատուցէք անոր . Ինչու որ իր սրտին մէջը կ'ըսէ թէ՝ Ես թագուհի կը նստիմ , ու որբևարի չեմ , ու բնաւ
8 սուգ պիտի չտեսնեմ ։ Անոր համար մէկ օրուան մէջ պիտի գան անոր հարուածները՝ մահ , ու սուգ , և սով . ու կրակով պիտի այրի . Ինչու որ հզօր է Տէր Աստուածը՝
9 որ զանիկայ դատեց ։ Ու երկրի թագաւորները՝ որ անոր հետ պոռնկեցան ու հեշտացան , պիտի լան ու կոծեն անոր վրայ երբոր անոր հրկիզութեանը ծուխը
10 տեսնեն . Եւ անոր տանջանքին վախէն՝ հեռուն պիտի կայնին՝ ու ըսեն . Վա՛յ՝ վա՛յ քեզի մեծ Բաբելոն քաղաք՝ հզօր քաղաք , որ մէկ ժամու մէջ եկաւ քու դատաս-
11 տանդ ։ Ու երկրի վաճառականները պիտի ողբան ու սուգ ընեն անոր վրայ . ինչու որ ալ մէկը ծախու չառներ անոնց վաճառքը .

Յամ Տեառն
96

Մարգին՝ ձախ։ Հր Թես . բ . 7 ։ Գլ . ժա . Տ ։ ժգ . 8 . ժզ . 19 ։ ժը . 2 . 10 . 21 ։ Գլ . ժբ . 9 ։ ժթ . 2 ։ Գլ . ժգ . 15 ։ ժզ . 6 ։ Գլ . զ . 9 . 10 ։ ժբ . 11 ։ Գլ . ժէ . 24 ։ Գլ . ժա . 7 ։ ժգ . 1 ։ Գլ . ժգ . 10 ։ Հմր 11 ։ Գլ . ժգ . 8 ։ Գլ . ժգ . 3 ։ Գլ . ժգ . 18 ։ Գլ . ժգ . 1 ։ Հմր 8 ։ Դան . Ժ . 20 ։ Զաք . ա . 18 . 19 . 21 ։ Գլ . ժգ . 1 ։ Գլ . ժզ . 14 ։ ժթ . 19 ։ Ա Տիմ . զ . 15 ։ Գլ . ժթ . 16 ։ Երեմ . ծ . 44 . 45 ։ Գլ . ժզ . 4 ։ Ես . ը . 7 ։ Հմր 1 ։ Գլ . ժգ . 7 ։ Երեմ . ծ . 41 . 42 ։ Գլ . ժզ . 12 ։ Եզեկ . ժզ . 37—44 ։ Գլ . ժբ . 16 ։ Գլ . ժբ . 8 ։ Բ Թես . բ . 10 ։ Գլ . ժ . 7 ։ Գլ . ժզ . 19 ։

Մարգին՝ աջ։ Գլ . ժբ . 4 ։ Գլ . ժէ . 1 ։ Եզեկ . խգ . 2 ։ Ես . ժգ . 19 ։ խա . 9 ։ Երեմ . ծա . 8 ։ Գլ . ժգ . 8 ։ Ես . ժգ . 21 ։ խա . 9 ։ լգ . 14 ։ Երեմ . ծ . 39 ։ ծա . 37 ։ Ես . ժգ . 23 ։ լգ . 11 ։ Մար . ե . 2 . 3 ։ Գլ . ժգ . 8 ։ ժէ . 2 ։ Հմր 11 . 15 ։ Ես . խէ . 15 ։ Ես . խը . 20 ։ ծբ . 11 ։ Երեմ . ծ . 8 ։ ծա . 6 . 45 ։ Բ Կոր . զ . 17 ։ Ծն . ժը . 20 . 21 ։ Երեմ . ծա . 9 ։ Յովն . ա . 2 ։ Գլ . ժզ . 19 ։ Սաղ . ճլէ . 8 ։ Երեմ . ծ . 15 . 29 ։ ծա . 24 . 49 ։ Բ Տիմ . դ . 14 ։ Գլ . ժգ . 10 ։ Գլ . ժգ . 10 ։ Գլ . ժզ . 19 ։ Եզեկ . իը . 2 և ։ Ես . խէ . 7 . 8 ։ Սոփ . բ . 15 ։ Ես . խէ . 9 ։ Հմր 10 ։ Գլ . ժէ . 16 ։ Երեմ . ծ . 34 ։ Գլ . ժա . 17 ։ Եզեկ . իզ . 16 . 17 ։ Գլ . ժէ . 2 ։ Հմր 3 ։ Երեմ . ծ . 46 ։ Հմր 18 ։ Գլ . ժթ . 3 ։ Ես . իա . 9 ։ Գլ . ժդ . 8 ։ Հմր 17 . 19 ։ Եզեկ . իէ . 27—36 ։ Հմր 3 ։

Յամի Տեառն 96

12 ՟Ոսկիի՝ ու արծաթի՝ և պատուա-
կան քարերու՝ ու մարգարիտներու՝
և բեհեզի՝ ու ծիրանիի՝ և մետաքսի՝
ու որդան կարմիրի վաճառքը՝ և ա-
մէն խունկի փայտերը՝ ու ամէն փղ-
ոսկրեայ ամանները՝ և ամէն պա-
տուական փայտէ՝ ու պղնձէ՝ և եր-
կաթէ՝ ու մարմարիոնէ ամանները.
13 Եւ կինամոնը՝ ու ամոմոնը և խուն-
կերը՝ ու անուշահոտ եղը՝ ու կնդ-
րուկը՝ և գինին՝ ու ձէթը՝ և նաշի-
հը՝ ու ցորենը՝ և արջառները՝ ու
ոչխարները՝ և ձիերը ու կառքերը՝
և ՟մարմինները ու մարդոց հոգինե-
14 րը։ Եւ քու հոգիիդ ցանկացած
պտուղները քեզմէ գնաց. ու բոլոր
շքեղ ու փայլուն բաները քեզմէ
կորսուեցաւ, և ալ բնաւ պիտի
15 չգտնես զանոնք։ Այս բաներուն
վաճառականները՝ որ անկէ հարըս-
տացած էին, հեռուն պիտի կայնին
անոր տանջանքին վախէն՝ լալով ու
16 սուգ ընելով, Ու պիտի ըսեն.
Վա՜յ վայ մեծ քաղաք ՟որ բեհեզ՝
ու ծիրանի և որդան կարմիր հագած
էիր, ու ոսկիով՝ և պատուական
քարերով՝ ու մարգարիտներով զար-
17 դարուած էիր. ՟Ինչու որ այնքան
հարստութիւնը մէկ ժամու մէջ
փճացաւ։ ՟Ու ամէն նաւավարնե-
րը՝ և ան ամէնը՝ որ նաւով տեղ
տեղ կ'երթան, ու նաւաստիները.
և որոնք որ ծովու մէջ կը բանին.
18 հեռուն կայնեցան. ՟Եւ տեսնելով
անոր հրկիզութեանը ծուխը. կ'ա-
ղաղակէին՝ ըսելով. ՟Ո՞վ նման է
19 ՟այս մեծ քաղաքիս. ՟Ու իրենց գը-
լուխներուն վրայ հող ցանեցին, և
լալով ու սուգ ընելով կ'աղաղա-
կէին՝ ըսելով. Վա՜յ վայ ան մեծ
քաղաքին, որուն մէջ իր պատուա-
կանութենէն հարստացան ամէնքը՝
որ նաւեր ունէին ծովուն վրայ.
՟Ինչու որ մէկ ժամու մէջ ամայա-
20 ցաւ։ ՟Ուրախացէ՛ք անոր վրայ
երկինք՝ ու սուրբեր և առաքեալներ
ու մարգարէներ. ՟որ Աստուած
ձեր վրէժը անկէ առաւ։
21 Եւ մէկ զօրաւոր հրեշտակ մը
քար մը առաւ աղօրիքի մեծ ՟քարի
նման, ու ծովը ձգեց՝ ըսելով. ՟Ա-
սանկ ուժով վար պիտի ձգուի Բա-
բիլոն մեծ քաղաքը, ՟ու ալ պիտի
22 չգտնուի։ ՟Եւ քնարահարներուն
ու երաժիշտներուն և սրնգահարնե-
րուն ու փողահարներուն ձայնը ալ
պիտի չլսուի քու մէջդ. և արհես-
տի վարպետ մը ալ բնաւ պիտի
չգտնուի քու մէջդ, ու աղօրիքին
ձայնը ալ պիտի չլսուի քու մէջդ.
23 ՟Եւ ճրագին լոյսը ալ պիտի չերև-
նայ քու մէջդ. ՟ու փեսային ձայնը
և հարսին ձայնը ալ պիտի չլսուի
քու մէջդ. ՟Քանզի քու վաճառա-
կաններդ երկրի մեծամեծներն էին.
՟Ինչու որ քու կախարդութիւնովդ
24 բոլոր ազգերը մոլորեցան։ ՟Եւ
մարգարէներուն ու սուրբերուն ու
՟երկրի վրայ բոլոր սպաննուածնե-
րուն արիւնը անոր մէջը գտնուե-
ցաւ։

## ԳԼ. ԺԹ

1 Երկնից մէջ զԱստուած կը փառաբանեն՝ որ դատեց պոռնիկը, և սուրբերուն արեանը վրէժը առաւ. 7 Գառնուկին հարսնիքը. 10 Հրեշտակը չուզեր որ Յովհաննէս իրեն երկրպագութիւն ընէ. 17 Թռչունները կը կանչուին մեծ կոտորածին.

1 Ասկէ ետքը շատ բազմութեան
՟մեծ ձայն մը լսեցի երկինքը՝
ըսելով. Ալէլուիա. ՟Փրկութիւն
ու փառք և պատիւ ու զօրութիւն
2 մեր Աստուծոյն. ՟Ինչու որ ճշմա-
րիտ ու արդար են անոր դատաս-
տանները, քանզի դատեց ան մեծ
պոռնիկը, որ իր պոռնկութիւնովը
երկիրը ապականեց. ՟Ու իր ծա-
ռաներուն արեան վրէժը անոր ձեռ-
3 քէն պահանջեց։ Եւ կրկին անգամ
ըսին. Ալէլուիա. ՟Ու անոր ծու-
խը յաւիտեանս յաւիտենից կ'ելլէ։
4 ՟Եւ քսանըչորս երէցները ու չորս
կենդանիները ինկան՝ ու երկրպա-
գութիւն ըրին Աստուծոյ՝ որ ա-
թոռը կը նստի. ըսելով. ՟Ամէն.
5 Ալէլուիա։ Եւ աթոռէն ձայն մը
ելաւ՝ ըսելով. ՟Մեր Աստուծոյն
օրհնութիւն տուէ՛ք՝ իր բոլոր ծա-
ռաները. ու դուք որ իրմէն կը
վախնաք՝ ՟պզտիկներ ու մեծեր։
6 ՟Եւ լսեցի շատ բազմութեան ձայ-
նի պէս՝ ու շատ ջուրերու ձայնի
պէս, ու սաստիկ որոտումներու
ձայնի պէս՝ որ կ'ըսէին. Ալէլուիա,
՟Ինչու որ մեր Ամենակալ Տէր Աս-
7 տուածը թագաւորեց։ Խնդանք՝
և ուրախանանք՝ ու փառք տանք
անոր, ՟քանզի Գառնուկին հարս-
նիքը հասաւ, ու անոր կինը ինք-
8 զինքը պատրաստեց. ՟Եւ իրեն
տրուեցաւ՝ որ մաքուր ու լուսա-
փայլ բեհեզ հագնի, (՟որ ան բե-
հեզը սուրբերուն արդարութիւնն
9 է,) Եւ ինծի ըսաւ. Գրէ. ՟Եր-
անելի են անոնք որ Գառնուկին
հարսանեացը ընթրիքին կանչուած
են. ու ինծի ըսաւ. Ասոնք են Աս-
10 տուծոյ ճշմարիտ խօսքերը. ՟Եւ
ալ անոր ոտքերուն առջեւ ինկայ,
որ անոր երկրպագութիւն ընեմ.
ու ըսաւ ինծի. Զգուշացի՛ր՝ ՟մի
ըներ. ինչու որ ես ալ քու ծառա-
յակիցդ եմ՝ ու քու եղբայրներուդ,
՟որոնք Յիսուսի վկայութիւնը ու-
նին. Աստուծոյ երկրպագութիւն
ըրէ. (ինչու որ Յիսուսի վկայու-

Յամի Տեառն 96
Գլ. ժէ. 4.
Եզեկ. իէ. 13.
Հմր 3. 11.
Գլ. ժէ. 4.
Հմր 10.
Եսա. իգ. 14. Եզեկ. իէ. 29.
Եզեկ. իէ. 30. 31. Հմր 9.
Գլ. ժգ. 4.
Յեսու. է. 6. Աթագ. դ. 12. Յոբ. բ. 12. Եզեկ. իէ. 30.
Հմր 8.
Եսա. խդ. 23. Խթ. 13. Երեմ. ծա. 48.
Ղուկ. ժա. 49. 50. Գլ. ժթ. 2.
Երեմ. ծա. 64.
Գլ. ժբ. 8. ժզ. 20.
Եսա. իդ. 8. Երեմ. է. 34. ժզ. 9. իե. 10. Եզեկ. իզ. 13.
Երեմ. իե. 10.
Երեմ. է. 34. ժզ. 9. իե. 10. Լգ. 11.

Յամի Տեառն 96
Եսա. իզ. 8. Եղծաղ. Խ. 22. Նաւ. գ. 4. Գլ. ժէ. 2. 5.
Գլ. ժէ. 6.
Երեմ. ծա. 49.
Գլ. ժա. 15.
Գլ. դ. 11. է. 10. 12. ժբ. 10.
Գլ. ժէ. 3. ժզ. 7.
Օր. լբ. 43. Գլ. զ. 10. ժը. 20.
Եսա. լդ. 10. Գլ. ժդ. 11. ժը. 9. 18.
Գլ. դ. 4. 6. 10. ե. 14.
Սաղմ. ժզ. 36. Նեեմ. ե. 13. ը. 6. Գլ. ե. 14.
Սաղ. ճլե. 1. ճլե. 1.
Գլ. ժա. 18. ի. 12.
Եզեկ. ա. 24. խգ. 2. Գլ. ժդ. 2.
Գլ. ժա. 15. 17. ժբ. 10. իա. 22.
Մատ. իբ. 2. իե. 10. Եփես. ե. 32. Գլ. իա. 2. 9.
Սաղ. խե. 13. 14. Եզեկ. ժզ. 10. Գլ. գ. 18.
Սաղ. ճլբ. 9.
Մատ. իբ. 2. 3. Ղուկ. ժդ. 15. 16.
Գլ. իբ. 8.
Գործ. ժ. 26. ժդ. 14. Գլ. իբ. 9.
Յովհ. ա. 10. Գլ. ժբ. 17.

Ցամ Տեառն
96

թիւնը մարգարէութեան հոգին
է ։)
11 Եւ տեսայ երկինքը բացուած .
ու ահա՛ մէկ ճերմակ ձի մը , ու ա_
նոր վրայ հեծնողը՝ Հաւատարիմ
ու Ճշմարիտ կ՚ըսուի . Եւ արդա_
րութեամբ դատաստան կը տեսնէ
12 ու կը պատերազմի . Եւ անոր աչ_
քերը կրակի բոցի պէս էր , ու անոր
գլխուն վրայ շատ թագեր կար , ու
գրուած անուն մը ունէր՝ որ մէկը
13 չգիտէր , բայց միայն ինքը . Եւ
արիւնով ներկուած հանդերձ մը
հագեր էր . Ու անոր անունը Բան
14 Աստուծոյ կ՚ըսուի ։ Ու երկնից
մէջ եղող զօրքերը անոր ետեւէն
կ՚երթային ճերմակ ձիերով , ճեր_
մակ ու մաքուր բեհեզներ հագած ։
15 Եւ անոր բերնէն սրած սուր մը
կ՚ելլէր , որ անով ազգերը զարնէ .
ու ինքը երկաթէ գաւազանով պի_
տի հովուէ զանոնք . Ու Ամենակալ
Աստուծոյ սաստիկ բարկութեանը
գինիին հնձանը ինքը պիտի կոխէ ։
16 Եւ իր պատմուճանին վրայ ու իր
ազդրին վրայ գրուած գիր մը ու_
նէր , ԹԱԳԱՒՈՐ ԹԱԳԱՒՈՐԱՑ
ԵՒ ՏԷՐ ՏԵՐԱՆՑ ։
17 Եւ մէկ հրեշտակ մը տեսայ՝ որ
արեւին մէջը կայներ էր , ու մեծ
ձայնով աղաղակեց երկնքի մէջ
թռչող բոլոր թռչուններուն՝ ըսե_
լով . Եկէ՛ք՝ Աստուծոյ մեծ ընթ_
18 րիքին ժողվուեցէք . Որ ուտէք
թագաւորներուն մարմինները՝ ու
հազարապետներուն մարմինները՝
զօրաւորներուն մարմինները՝ ու
ձիերուն և անոնց վրայ հեծնողնե_
րուն մարմինները՝ ու ամենուն մար_
մինները՝ թէ ազատներուն և թէ
ծառաներուն , թէ պզտիկներուն
և թէ մեծերուն ։
19 Եւ տեսայ գազանը ու երկրի
թագաւորները ու անոնց զօրքերը
մէկտեղ ժողվուած պատերազմ ը_
նելու անոր հետ , որ ձիին վրայ
հեծեր էր , ու անոր զօրքերուն
20 հետ ։ Եւ գազանը բռնուեցաւ ,
ու անոր հետ սուտ մարգարէն՝ որ
անոր առջեւը նշաններ ըրաւ , որոնց_
մով մոլորցուց գազանին դրոշմը
ընդունողները , և անոր պատկերին
երկրպագութիւն ընողները . Եր_
կուքն ալ ողջ ողջ ծծումբով վա_
21 ռած կրակին լիճը ձգուեցան ։ Եւ
ուրիշներն ալ սպաննուեցան ձիին
վրայ հեծնողին սուրէն , որ իր բեր_
նէն կ՚ելլէր , Ու բոլոր թռչունները
անոնց մարմիններէն կշտացան ։

ֆ Գլ. ժե. 5։ ք Գլ. զ. 2։ օ Գլ. գ. 14։ ն Եսա. ժա. 4։ շ Գլ. ա. 14։ բ. 18։ ո Գլ. զ. 2։ չ Գլ. բ. 17։ Հմր 16։ պ Եսա. կգ. 2, 3։ ջ Յօհ. ա. 1։ ա Յօհ. ե. 7։ ռ Գլ. ժդ. 20։ ս Մատ. իը. 3։ Գլ. դ. 4։ է. 9։ վ Եսա. ժա. 4։ բ Թես. բ. 8։ Գլ. ա. 16։ Հմր 21։ տ Սաղ. բ. 9։ Գլ. բ. 27։ ժբ. 5։ ր Եսա. կգ. 3։ Գլ. ժգ. 19, 20։ ց Հմր 12։ ւ Դան. բ. 47։ ա Տիմ. զ. 15։ Գլ. ժէ. 14։ փ Հմր 21։ ք Եզեկ. լթ. 17։ օ Եզեկ. լթ. 18, 20։ ֆ Գլ. ժզ. 16։ ժէ. 13, 14։ ա Գլ. ժզ. 13, 14։ բ Գլ. ժգ. 12, 15։ գ Գլ. ի. 10։ Տես Դան. է. 11։ դ Գլ. ժդ. 10։ իա. 8։ ե Հմր 15։ զ Հմր 17, 18։ է Գլ. ժէ. 16։

## ԳԼ. Ի

2 Սատանան հազար տարի կը կապուի ։ 6 Առաջին յարութիւնը . երանի՛ անոնց որ անոր մէջ բաժին ունին ։ 7 Սատանան նորէն արձակուելով՝ Գոգը ու Մագոգը կը ժողվէ ։ 9 Սատանան կը ձգուի կրակի ու ծծումբի ծովին մէջ ։ 12 Վերջին ընդհանուր յարութիւնը ։

1 Եւ հրեշտակ մը տեսայ՝ որ երկին_
քէն կ՚իջնէր , ու անդունդին
բանալին և մեծ շղթայ մը ունէր իր
2 ձեռքը . Ու բռնեց վիշապը այն հին
աւձին օձը՝ որ Բանսարկուն ու Սա_
տանան է , և կապեց զանիկայ հա_
3 զար տարի . Ու անդունդը ձգեց
զանիկայ՝ և գոցեց ու վրայէն
կնքեց , որ ալ չմոլորցընէ ազգերը՝
մինչև որ հազար տարին լմննայ , և
անկէ ետքը պէտք է որ արձակուի
անիկայ քիչ մը ժամանակ ։
4 Եւ աթոռներ տեսայ , ու նստան
անոնց վրայ . Եւ անոնց դատաւո_
րութիւն տրուեցաւ . Նաև Յիսու_
սի վկայութեանը համար ու Աստու_
ծոյ խօսքին համար գլխատուած_
ներուն հոգիները տեսայ , Եւ անոնք
որ երկրպագութիւն չըրին գա_
զանին՝ ոչ ալ անոր պատկերին , Ու
անոր դրոշմը իրենց ճակատներուն
վրայ ու իրենց ձեռքին վրայ չըն_
դունեցին , և ապրեցան՝ ու Քրիս_
տոսի հետ հազար տարի թագա_
5 ւորեցին ։ Եւ ուրիշ մեռելները
չապրեցան , մինչև որ հազար տա_
րին կատարուեցաւ . Անիկայ է առ_
6 ջին յարութիւնը ։ Երանելի և
սուրբ է ան՝ որ առջի յարութեանը
մէջ բաժին ունի . Ասոնց վրայ
երկրորդ մահը իշխանութիւն չու_
նի . Հապա անոնք Աստուծոյ ու
Քրիստոսի քահանաները պիտի ըլ_
լան , Ու անոր հետ հազար տարի
պիտի թագաւորեն ։
7 Եւ հազար տարին լրանալուն
պիտի արձակուի Սատանան իր
բանտէն . և պիտի ելլէ ու մոլոր_
ցընէ երկրի չորս անկիւնները ե_
ղող ազգերը՝ Գոգը ու Մագոգը ,
որ զանոնք պատերազմի ժողվէ ,
որոնց համրանքը ծովու աւազին
8 չափ է ։ Ու երկրի ընդարձակու_
թեանը մէջ ելան , և սուրբերուն
բանակը ու սիրելի քաղաքը չորս
9 կողմէն պատեցին ։ Ու երկինքէն
Աստուծմէ կրակ իջաւ , ու սպառեց
զանոնք . Եւ Բանսարկուն որ անոնք
մոլորցուց , ձգուեցաւ կրակի ու
ծծումբի լիճին մէջ , ուր որ էր
10 գազանը , Եւ սուտ մարգարէն . Ու
պիտի չարչարուին ցորեկ ու գիշեր
յաւիտեանս յաւիտենից ։
11 Եւ մեծ ճերմակ աթոռ մը տե_
սայ , ու անոր վրայ մէկը նստած ,
որուն երեսէն երկիրը ու երկինքը
փախան , Եւ տեղ չգտնուեցաւ ա_
12 նոնց ։ Եւ տեսայ պզտիկ ու մեծ
մեռելները՝ որ աթոռին առջեւը
կայնած էին . Ու գիրքերը բա_

Ցամ Տեառն
96

ա Գլ. ա. 18։ թ. 1։ բ Գլ. ժբ. 9։ Տես բ Պետ. բ. 4։ Յուդ. 6։ գ Դան. զ. 17։ դ Գլ. ժզ. 14, 16։ Հմր 7։ ե Դան. է. 9, 22, 27։ Մատ. ժթ. 28։ Ղու. իբ. 30։ զ ա Կոր. զ. 2, 3։ է Գլ. զ. 9։ ը Գլ. ժգ. 12։ թ Գլ. ժդ. 15, 16։ ժ Հռով. ը. 17։ բ Տիմ. բ. 21։ Գլ. ե. 10։ ի Գլ. բ. 11։ իա. 8։ լ Եսա. կա. 6։ ա Պետ. բ. 9։ Գլ. ա. 6։ ե. 10։ խ Հմր 4։ ծ Հմր 2։ կ Հմր 3։ 9։ հ Եզեկ. լը. 2։ լթ. 1։ ձ Գլ. ժզ. 14։ ղ Եսա. ը. 8։ Եզեկ. լը. 9, 16։ ճ Հմր 7։ մ Գլ. ժթ. 20։ յ Գլ. ժդ. 10, 11։ ն բ Պետ. գ. 7, 10, 11։ Գլ. իա. 1։ շ Դան. բ. 35։ ո Գլ. ժթ. 5։ չ Դան. է. 10։

Յամի Տեառն 96

ղ Սաղ. կթ. 28 ; Դան. ժբ. 1 ; Փիլ. դ. 3 ; Գլ. գ. 5 ; ժգ. 8 ; իա. 27 ; Երեմ. ժէ. 10 ; լբ. 19 ; Մատ. ժզ. 27 ; Հռով. բ. 6 ; Գլ. բ. 23 ; իբ. 12 ; Հմր 13 ;
ա Գլ. զ. 8 ;
ա Հմր 12 ;
ա Կոր. ժե. 26, 54, 55 ;
տ Հմր 6 ; Գլ. իա. 8 ;
ր Գլ. ժթ. 20 ;

ա Ես. կե. 17 ; կզ. 22 ; բ Պետ. գ. 13 ;
բ Գլ. ի. 11 ;
գ Ես. ծբ. 1 ; Գաղ. դ. 26 ; Եբր. ժա. 10 ; ժբ. 22 ; ժգ. 14 ; Գլ. գ. 12 ; Հմր 10 ;
դ Ես. ծդ. 5 ; կա. 10 ; բ Կոր. ժա. 2 ;
ե Ղև. իզ. 11, 12 ; Եզեկ. խէ. 7 ; բ Կոր. զ. 16 ; Գլ. է. 15 ;
զ Ես. իե. 8 ; Գլ. է. 17 ;
է ա Կոր. ժե. 26, 54 ; Գլ. ի. 14 ;
ը Ես. լե. 10 ; կա. 3 ; կե. 19 ;
թ Գլ. դ. 2, 9 ; ե. 1 ; ի. 11 ;
ժ Ես. խգ. 19 ; բ Կոր. ե. 17 ;
ի Գլ. ժթ. 9 ;
լ Գլ. ժվ. 17 ;
խ Գլ. ա. 8 ; իբ. 13 ;
ծ Ես. ժբ. 3 ; ծե. 1 ; Յովհ. դ. 10, 14 ; է. 37 ; Գլ. իբ. 17 ;
* Ոմանք՝ ամէն
կ Զաք. ը. 8 ; Եբր. ը. 10 ;
հ ա Կոր. զ. 9, 10 ; Գաղ. ե. 19, 20, 21 ; Եփես. ե. 5 ; ա Տիմ. ա. 9 ; Եբր. ժբ. 14 ; իբ. 15 ;
ձ Գլ. ի. 14, 15 ;
ղ Գլ. ժե. 1, 6, 7 ;

ցուեցան, և ուրիշ գիրք մը բա-
ցուեցաւ՝ այսինքն կենաց գիրքը. և
գիրքերուն մէջը գրուածներէն մե-
ռելները դատուեցան իրենց գործ-
13 քերուն համեմատ ։ Եւ ծովը իր
մէջի մեռելները տուաւ, ու մահը
և դժոխքը իրենց մէջի մեռելները
տուին. ու ամէն մէկը իրենց գործ-
քերուն համեմատ դատուեցան ։
14 Եւ մահը ու դժոխքը կրակի լիճին
մէջը ձգուեցան. Ասիկայ է երկ-
15 րորդ մահը ։ Ու ով որ կենաց
գիրքին մէջը գրուած չգտնուեցաւ,
կրակի լիճին մէջը ձգուեցաւ ։

ԳԼ. ԻԱ

1 Նոր երկինքը ու նոր երկիրը ։ 10 Երկնային Երուսաղեմին տեսիլքը ու անոր ստորագրութիւնը ։ 23 Անոր մէջ արևի կարօտութիւն չկայ, որովհետև Աստուծոյ փառքը անոր լոյսն է ։ 24 Երկրի թագաւորները իրենց հարստութիւնները անոր կը բերեն ։

1 Ու նոր երկինք մը ու նոր երկիր մը
տեսայ. ինչու որ առջի երկին-
քը ու առջի երկիրը անցաւ. ու
2 ալ ծով չկար ։ Եւ սուրբ քաղա-
քը նոր Երուսաղէմը տեսայ՝ որ եր-
կինքէն Աստուծմէ կ'իջնէր, իր
էրկանը համար զարդարուած հարսի
3 մը պէս պատրաստուած ։ Ու եր-
կինքէն մեծ ձայն մը լսեցի՝ որ կ'ը-
սէր. Ահա Աստուծոյ խորանը
մարդոց մէջը, ու անիկայ անոնց
հետ պիտի բնակի. և անոնք անոր
ժողովուրդը պիտի ըլլան, և Աս-
տուած ինքը անոնց հետը պիտի
4 ըլլայ իբրև անոնց Աստուածը. Եւ
Աստուած անոնց աչքերէն բոլոր ար-
ցունքները պիտի սրբէ, ու ալ
մահ պիտի չըլլայ. ոչ սուգ՝ և ոչ
աղաղակ՝ և ոչ ցաւ պիտի ըլլայ
ասկէ ետև. ինչու որ առջի բաները
5 անցան ։ Եւ ան որ աթոռին վրայ
կը նստէր, ըսաւ. Ահա ամէն բա-
ները նոր կ'ընեմ. ու ըսաւ ինծի.
Գրէ. ինչու որ ասա խօսքերը ճշմա-
6 րիտ ու հաւատարիմ են ։ Նաև ը-
սաւ ինծի. Եղաւ. Ես եմ Ալֆա
ու Օմեղա՝ սկիզբը ու վերջը. Ես
ծարաւին ձրի պիտի տամ կենաց
7 ջուրին աղբիւրէն ։ Ան որ կը յաղ-
թէ, *աս բաները պիտի ժառանգէ.
ու ես անոր Աստուած պիտի ըլլամ,
ան ալ ինծի որդի պիտի ըլլայ ։
8 Բայց վախկոտներուն՝ ու անհա-
ւատներուն՝ և պիղծերուն՝ ու մար-
դասպաններուն՝ ու պոռնիկներուն՝
և կախարդներուն՝ ու կռապաշտնե-
րուն՝ և բոլոր ստախօսներուն բա-
ժինը՝ կրակով ու ծծումբով վա-
ռած լիճին մէջը պիտի ըլլայ, որ է
երկրորդ մահը ։
9 Եւ եօթը վերջին հարուածնե-
րով լեցուն եօթը սկաւառակները

ունեցող եօթը հրեշտակներէն մէկը
եկաւ, և հետս խօսեցաւ ու ըսաւ.
Եկուր ցուցընեմ քեզի հարսը՝
10 Գառնուկին կնիկը ։ Եւ հոգիով
մէկ բարձր ու մեծ լեռան մը վրայ
տարաւ զիս, և ցուցուց ինծի
սուրբ Երուսաղէմ քաղաքը, որ
11 երկինքէն Աստուծմէ կ'իջնէր. Ու
Աստուծոյ փառքը ունէր. և անոր
լուսաւորութիւնը խիստ պատուա-
կան քարի նման էր, ակնվանիի
12 բիւրեղով յասպիս քարի պէս ։ Եւ
անոր պարիսպը մեծ ու բարձր էր,
և տասներկու դռներ ունէր. ու
դռներուն վրայ տասներկու հրեշ-
տակներ կար. և դռներուն վրայ
անուններ գրուած էր՝ այսինքն Իս-
րայէլի որդւոցը տասներկու ցեղե-
13 րուն անունները ։ Արևելեան կող-
մէն երեք դուռ, ու հիւսիսային
կողմէն երեք դուռ, և հարաւային
կողմէն երեք դուռ, ու արևմտեան
14 կողմէն երեք դուռ ։ Եւ քաղաքին
պարիսպը տասներկու հիմեր ունէր,
ու անոնց վրայ՝ Գառնուկին տա-
սներկու առաքեալներուն տա-
15 սներկու անունները գրուած էր ։
Եւ իմ հետս խօսողը ձեռքը չափ
մը ունէր՝ ոսկիէ եղէգ մը, որ չափէ
քաղաքը ու անոր դռները ու անոր
16 պարիսպը չափէ ։ Եւ քաղաքը
քառակուսի էր. ու անոր երկայ-
նութիւնը լայնութեանը չափ էր.
և քաղաքը նոյն եղէգով տասներ-
կու հազար ասպարէզ չափեց. ա-
նոր երկայնութիւնը ու լայնու-
թիւնը և բարձրութիւնը հաւասար
17 էր ։ Ու անոր պարիսպը հարիւր
քառասունչորս կանգուն չափեց՝
մարդու չափով, այսինքն՝ հրեշտա-
18 կին չափով ։ Եւ անոր պարսպին
շինուածքը յասպիս քար էր. ու
քաղաքը զուտ ոսկի էր՝ մաքուր
19 ապակիի նման ։ Եւ քաղաքին
պարսպին հիմերը ամէն տեսակ պա-
տուական քարերով զարդարուած
էին. առջի հիմը յասպիս էր.
երկրորդը՝ շափիւղայ, երրորդը՝
քաղկեդոն, չորրորդը՝ զմրուխտ,
20 հինգերորդը՝ եղնգնաքար, վեցե-
րորդը՝ սարդիոն, եօթներորդը՝
ոսկեքար, ութերորդը՝ բիւրեղ,
իններորդը՝ տպազիոն, տասներոր-
դը՝ քրիսոպրասոս, մետասաներոր-
դը՝ յակինթ, երկոտասաներորդը՝
21 ամեթիստ ։ Եւ տասներկու դըռ-
ները տասներկու մարգարիտ էին.
ամէն մէկ դուռը մէյմէկ մէկ
մարգարիտէ էր. ու քաղաքին
հրապարակը մաքուր ոսկի էր՝
22 թափանցիկ ապակիի նման ։ Եւ
անոր մէջը տաճար չտեսայ. ինչու
որ Տէր Աստուած Ամենակալը՝ ու

Յամի Տեառն 96

ե Գլ. ժթ. 7 ; Հմր 2 ;
զ Գլ. ա. 10 ; ժէ. 3 ;
յ Եզեկ. խը. Հմր 2 ;
ն Գլ. իբ. 5 ; Հմր 23 ;
շ Եզեկ. խը. 31—34 ;
ո Եզեկ. խը. 31—34 ;
չ Մատ. ժզ. 18 ; Գաղ. բ. 9 ; Եփես. բ. 20 ;
պ Եզեկ. խ. 3 ; Զաք. բ. 1 ; Գլ. ժա. 1 ;
ջ Ես. ծդ. 11 ;
ռ Գլ. իբ. 2 ;
ս Յովհ. դ. 23 ;

Յամի Տեառն
96

Եսայ. իզ. 23։ կ. 19. 20։ Գլ. իբ. 5։ Հմր 11։
Եսայ. կ. 3. 5. 11։ կզ. 12։
Եսայ. կ. 11։
Եսայ. կ. 20։ Զաք. ժդ. 7։ Գլ. իբ. 5։
Հմր 24։
Եսայ. լե. 8։ ծբ. 1։ կ. 21։ Յովել. գ. 17։ Գլ. իբ. 14. 15։
Փիլ. դ. 3։ Գլ. դ. 5։ ժգ. 8։ ի. 12։

23 Գառնուկը անոր ճրագն է ։ Եւ
քաղաքը արևի ու լուսնի պէտք
չունի , որ զանիկայ լուսաւորեն .
ինչու որ Աստուծոյ փառքը զանի-
կայ կը լուսաւորէ , ու անոր ճրա-
24 գը Գառնուկն է ։ Եւ փրկուած
ազգերը անոր լոյսովը պիտի քա-
լեն , ու երկրի թագաւորները ի-
րենց փառքը ու պատիւը անոր մէ-
25 ջը պիտի բերեն ։ Եւ անոր դռները
ցորեկը պիտի չգոցուին . ( վասն զի
26 հոն գիշեր պիտի չըլլայ . ) Եւ
ազգաց փառքը ու պատիւը անոր
27 մէջը պիտի բերեն ։ Եւ հոն բնաւ
անմաքրութիւն մը պիտի չմտնէ ,
ոչ ալ պղծութիւն ու ստութիւն
գործող մը . հապա միայն անոնք՝
որ Գառնուկին կենաց գրքին մէջը
գրուած են ։

## ԳԼ. ԻԲ

1 Կենաց ջուրին գետը ։ 2 Կենաց ծառը ։ 5 Աստուած ինքը կը լուսաւորէ երկնային քաղաքը ։ 9 Հրեշտակը չուզեր որ իրեն երկրպագութիւն մատուցուի ։ 18 Պէտք չէ բան մը աւելցընել Աստուծոյ խօսքին վրայ , ոչ ալ անկէ բան մը պակսեցընել ։

Եզեկ. խէ. 1։ Զաք. ժդ. 8։
Եզեկ. խէ. 12։ Գլ. իա. 21։
Ծն. բ. 9։ Գլ. բ. 7։
Գլ. իա. 24։
Զաք. ժդ. 11։
Եզեկ. խը. 35։
Մատ. ե. 8։ Ա Կոր. ժգ. 12։ Ա Յոհ. գ. 2։
Գլ. գ. 12։ ժդ. 1։
Գլ. իա. 23. 25։
Սաղ. լզ. 9։ ձզ. 11։
Դան. է. 27։ Հռով. ե. 17։ Բ Տիմ. բ. 12։ Գլ. գ. 21։
Գլ. ժթ. 9։ իա. 5։
Ոմանք՝ մարգարէից հոգիներուն
Գլ. ա. 1։
Գլ. գ. 11։ Հմր 10. 12. 20։
Գլ. ա. 3։

1 Եւ ինծի կենաց ջուրի գետ մը
ցուցուց ականակիտի պէս պայ-
ծառ , որ կ՚ելլէր Աստուծոյ ու
2 Գառնուկին աթոռէն ։ Եւ անոր
փողոցին հրապարակին մէջ , ու անոր
գետին մէկ կողմէն ու միւս կող-
մէն կենաց ծառ կար՝ որ տասներ-
կու կերպ պտուղ կը բերէր , ու ա-
մէն ամիս իր պտուղը կու տար . և
անոր ծառին տերևները հեթանոս-
3 ներուն բժշկութիւն կ՚ըլլար ։ Եւ
ալ բնաւ նզովք պիտի չըլլայ . Ու
անոր մէջը պիտի ըլլայ Աստուծոյ
ու Գառնուկին աթոռը . և անոր
ծառաները պիտի պաշտեն անի-
4 կայ . Եւ անոր երեսը պիտի տես-
նեն . Ու անոր անունը իրենց ճա-
կատներուն վրայ պիտի ըլլայ ։
5 Եւ հոն՝ ալ գիշեր պիտի չըլլայ ,
և ճրագ ու արևու լոյս պէտք չէ .
քանզի Տէր Աստուած պիտի լու-
սաւորէ զանոնք . և յաւիտեանս
յաւիտենից պիտի թագաւորեն ։
6 Ու ըսաւ ինծի . Աս խօսքերը
հաւատարիմ են ու ճշմարիտ . և
սուրբ մարգարէներուն Տէր Աս-
տուածը իր հրեշտակը խրկեց՝ իր
ծառաներուն ցուցընելու ինչ որ
7 շուտով պէտք է ըլլալ . Ահա ես
շուտով կու գամ . Երանի անոր՝
որ կը պահէ աս գրքիս մարգա-
րէութեան խօսքերը ։
8 Ու ես Յովհաննէս լսեցի ու տե-
սայ աս բաները . և երբ լսեցի ու
տեսայ , ինկայ որ երկրպագութիւն
ընեմ ան հրեշտակին ոտքերուն առ-
ջևը՝ որ աս բաները ինծի կը ցու-
9 ցընէր ։ Եւ ըսաւ ինծի . Զգուշ-
ացիր՝ մի՛ ըներ . ինչու որ ես քու
կից՝ ու քու եղբայրներուդ մարգա-
րէներուն՝ ու աս գրքիս խօսքերը
պահողներուն ծառայակիցն եմ .
Աստուծոյ երկրպագութիւն ըրէ ։
10 Եւ ըսաւ ինծի . Աս գրքիս մար-
գարէութեան խօսքերը մի՛ կնքեր ,
11 ինչու որ ժամանակը մօտ է ։ Ան
որ անիրաւութիւն կ՚ընէ՝ ալ անի-
րաւութիւն թող ընէ , ու ան որ
աղտոտ է՝ ալ աղտոտ ըլլայ , և ան
որ արդար է՝ ալ արդար ըլլայ , ու
ան որ սուրբ է՝ ալ սուրբ ըլլայ ։
12 Ահա ես շուտով կու գամ , և
իմ վարձքս իմ հետս է՝ ամէն
մէկուն իր գործքին համեմատ հա-
13 տուցանելու ։ Ես եմ Ալֆա ու
Օմէղա՝ առաջինը ու վերջինը՝
14 սկիզբը ու վախճանը ։ Երանելի
են անոնք՝ որ անոր պատուիրանք-
ները կը կատարեն , որ իշխանու-
թիւն ունենան կենաց ծառին վրայ ,
և դռներէն ներս քաղաքը մտնեն ։
15 Բայց դուրս պիտի մնան շուները՝
ու կախարդները՝ և պոռնիկները՝
ու սպանութիւն ընողները՝ և կռա-
պաշտները՝ ու ան ամէնը որ ստու-
թիւն կը սիրէ ու կ՚ընէ ։
16 Ես Յիսուս իմ հրեշտակս խրր-
կեցի՝ աս բաները ձեզի վկայելու
եկեղեցիներուն մէջ . Ես Դաւի-
թի արմատը ու ցեղն եմ , ու ա-
17 ռաւօտեան պայծառ աստղը ։ Եւ
Հոգին ու հարսը կ՚ըսեն , Եկուր .
և ան որ կը լսէ՝ թող ըսէ , Եկուր .
ու ան որ ծարաւ է՝ թող գայ ,
ու ան որ կ՚ուզէ՝ կենաց ջուրը ձրի
առնէ ։
18 Ես կը վկայեմ ամենուն՝ որ աս
գրքիս մարգարէութեան խօսքերը
կը լսէ . Թէ որ մէկը ասոնց վրայ
բան մը աւելցընէ , Աստուած ալ
անոր վրայ պիտի աւելցընէ ան հա-
րուածները՝ որ աս գրքիս մէջը գը-
19 րուած են ։ Եւ թէ որ մէկը աս
մարգարէութեանս գրքին խօսքերէն
բան մը պակսեցընէ , Աստուած ալ
անոր բաժինը պիտի պակսեցընէ
կենաց ծառէն ու սուրբ քաղաքէն՝
20 որ աս գրքիս մէջը գրուած են . Աս
բաներուն վկայութիւն տուողը՝
կ՚ըսէ Այո՛ շուտով կու գամ
ես ։ Ամէն Եկուր՝ Տէր Յիսուս .
21 Տէր Յիսուս Քրիստոսին շնորհքը
բոլոր սուրբերուն հետ ըլլայ . Ամէն .

Յամի Տեառն
96

Գլ. ժթ. 10։
Գլ. ժթ. 10։
Դան. ը. 26։ ժբ. 4. 9։ Գլ. ժ. 4։
Գլ. ա. 3։
Եզեկ. գ. 27։ Դան. ժբ. 10։ Բ Տիմ. գ. 13։
Հմր 7։
Եսայ. խ. 10։ կբ. 11։
Հռով. բ. 6։ ժդ. 12։ Գլ. ի. 12։
Եսայ. խա. 4։ խդ. 6։ խբ. 12։ Գլ. ա. 8. 11։ իա. 6։
Դան. ժբ. 12։ Ա Յոհ. գ. 24։
Հմր 2։ Գլ. բ. 7։
Գլ. իա. 27։
Ա Կոր. զ. 9. 10։ Գաղ. ե. 19. 20. 21։ Կող. գ. 6։ Գլ. թ. 20. 21։ իա. 8։
Փիլ. գ. 2։
Գլ. ա. 1։
Կամ՝ վրայով։
Գլ. ե. 5։
Թուե. իդ. 17։ Զաք. զ. 12։ Բ Պետ. ա. 19։ Գլ. բ. 28։
Գլ. իա. 2. 9։
Եսայ. ծե. 1։ Յոհ. է. 37։ Գլ. իա. 6։
Բ Օր. դ. 2։ ժբ. 32։ Առակ. լ. 6։
Ել. լբ. 33։ Սաղ. կթ. 28։ Գլ. գ. 5։ ժգ. 8։
Գլ. իա. 2։
Հմր 12։
Յոհ. իա. 25։
Բ Տիմ. դ. 8։
Հռով. ժզ. 20. 24։ Բ Թես. գ. 18։